# ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳԻՐՔ

## ՀՆՈՑ ԵՒ ՆՈՐՈՑ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

ՇԱՐԱԿԱՐԳՈՒԹԵԱՄԲ ՆԱԽՆԵԱՑՆ ՄԵՐՈՑ
ԵՒ ՃՇՄԱՐՏԱՍԻՐԱՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ,

ԶՈՐ ԶԿՆԻ ԱՄԱՑ ԲԱԶՄԱՑ

Յամի Տն. 1666. և ՚ի թուին Հայոց. ՌՃԺԵ. հրամանաւ Տն Յակոբայ Հայոց կաթուղիկոսի գլխակարգեալ և տնատեալ ըստ Լատինացւոց. նաև զՀամաձայնութիւն համարոց գրոց ծածանչից երերաց առընթեր կարգեալ Տն Ոսկանայ վրդպտի երևանեցւոյ. և առաջնով տպագրութբ ՚ի լոյս ածեալ:

Իսկ այժմ նորին լաւագոյն թղթովք, ազնուագոյն պատկերօք, գեղեցկագոյն ծաղկագրօք, զգուշագոյն սրբագրութբ, և բազմօք ծախուք՝ վերստին տպագրութբ ՚ի լոյս ածեցեալ,

Աշխատասիրութբ և ջանիւ Տն Մխիթարայ Վրդպտի Սեբաստացւոյ՝ Աբբայ Հայր կոչեցելոյ:

՚Ի փառս մեծագոյնս Այ: Եւ ՚ի յօգուտ մանկանց Եկեղեցւոյ:

Յամի Տն. 1733. և ՚ի թուին Հայոց. ՌՃՁԲ. Յունիս. 15.

՚Ի Հայրապետութեան Տն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի:



՚Ի ՎԵՆԵՏԻԿ ՔԱՂԱՔԻ.
՚Ի Տպարանի Անտոնի Պօռթօլի:
ՀՐԱՄԱՆԱՒ ՄԵԾԱՒՈՐԱՑ:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ ԲՈԼՈՐԻ

## Սրբազան Գրոհածոյ, այսինքն գրոց Հնոց, և Նորոց Կտակարանի:

Աստ_ ուած:

Ուսուցանեն մեզ գիրք Հնոյ կտակարանի, (ա) զԱ՟ծն զայն, զոր պաշտեցին Նոյ, Աբրահամ, Իսահակ, Յակոբ, Դաւիթ, և այլք հարք, գոլ միայն ճշմարիտ Ա՟Ծ. (բ) և զնոյն գոլ ամենակարող, և յաւիտենական. (գ) որ սակս բարութե իւրոյ՝ Բանիւ իւրով զերկին, և զերկիր, և որք ՚ի նոսա են՝ ստեղծեաց. յորմէ ամենեքեան յառաջեկին. առանց որոյ ոչ ինչ է բնաւին: (դ) արդար՝ և ողորմած. (ե) որ և զամենեսեան ներգործէ յամենեսեան ըստ կամաց իւրոց. (զ) որում ոչ ումեք պատկանի ասել՝ ընդէ՞ր այսպէս, կամ այնպէս արար:

Ստեղ_ ծումն Մարդոյ:

Մեղքն:

Բայց յայսմանէ, ուսուցանեն մեզ՝ (է) զնոյն ինքն զԱ՟Ծ զամենակար՝ ստեղծեալ գոլ զնի այլոց ամենեցուն՝ զԱ՟դամ զմարդն առաջին ՚ի պատկեր և ՚ի նմանութի իւր հոգևոր, և զնա տէր կացուցեալ ամենեցուն արարածոց յերկրի: Որ արդարև Ադամ (ը) մախանօք, և դաւաճանութե բանսարկուին, Արարչին իւրոյ պատուիրանի ոչ հնազանդեալ՝ (թ) իւրովք մեօք զմեզս ներեած յաշխարհս յայս, այնպիսի, և այնքան, (ժ) զի մեք ըստ մարմնոյ ՚ի նմանէ փոխաբերեալք՝ բնութե որդիք բարկութե իցեմք. և սակս այնորիկ մահու, դատապարտութե, լծոյ, և բռնակալութե սատանայի են_ թարկեցեալք լինիցիմք:

Խոստա_ ցեալ Քրիս_ տոս:

Նաև ուսուցանեն, (ի) կանխաւ խոստացեալ գոլ յԱ՟Յ Հօրէ՝ զզաւակն զայն օրհնեալ զՅ՟Ս Ք՟Ս զՈրդի իւր, զՓրկիչն մեր՝ ինքեան Ադամայ, Աբրահամու, Իսահակայ, Յակոբայ, Դաւթի, և այլոց հարցն. (լ) որ ՚ի մեղաց և ՚ի բռնութեն սատանայի փրկիցէր զնոսա, որք հաւատովն կենդանեաւ և գործով այսպիսի խոստման հաւատայցեն. (խ) և ՚ի նոյն Յ՟Ս Ք՟Ս ապաւինիցեն, զփրկութիւս զայս ՚ի նմանէ, և ՚ի ձեռն նորին յուսացեալք:

Օրէնք, և տասն Պատ_ գամք:

Բայց մինչդեռ ՚ի հարցն Նախայելոց սպասէր խոստացեալ փրկութիւն, և ազատութիւնն, վասն զի այն է մարդկան բնութի, այնքան հզարտ, իսկ և այնքան անտացեալ՝ մինչ զի ոչ յօժարաբար ինքեանք կամիցին զինքեանս ճանաչել մեղանչականս, որոց խոստացեալ փրկութիւնն իցէ պիտոյ. (ծ) զՕրէնն գրեալ ՚ի տախտակս քարեղէնս տուեալ գոլ յԱ՟Յ ՚ի ձեռն Մովսէսի. (կ) զի ՚ի ձեռն նորին ճանաչելով զմեղս, և մարդկայնոյ սրտի զչարութի, ջերմեռանդագունաբար փափաքիցեն մարդիկ գալստեանն Ք՟Ի, որ զնոսա ՚ի մեղաց ազատիցէր, և փրկիցէր. (հ) զոր ոչ օրէնն, և ոչ զոհք, և ոչ պատարագք օրէնին առնէին. (ձ) զի էին ստուերք և պատկերք ճշմարիտ մատուցման մարմնոյն Ք՟Ի, որով ամենայն մեղք եղծանելիք, և ալարտելիք էին:

Քրիս_ տոս [illegible]

Բայց Նորոյ կտակարանի մատենիւք ուսուցեալք լինիմք, (ղ) զՔ՟Ս զայն խոստացեալ (որ է ՚ի վերայ ամենեցուն Ա՟Ծ օրհնեալ յաւիտեանս) և

ա. Եսայ. 45. 14.
բ. Ծննդ. 21. 33.
Դանի. 7. 9.
գ. Ծննդ. 1. 2.
Եսայ. 45. 18.
դ. Եզեկ. 9. 27.
Սաղմ. 10. 8.
Եսայ. 45. 21.
Եզեկ. 22. 27.
ե. 1. Կորն. 12. 6.
Եփես. 1. 11.
զ. Հռով. 9. 20.
Եսայ. 45. 9.
Երեմ. 18. 6.
է. Ծննդ. 1. 27.
ը. Իմաս. 2. 24.
թ. Հռով. 5. 14. և 18.
ժ. Եփես. 2. 3.
ի. Ծննդ. 3. 15.
Ծննդ. 12. 3.
Ծննդ. 26. 4.
Ծննդ. 28. 14.
լ. Եբրա. 2. 14.
խ. 2. Թագ. 7. 12.
Սաղ. 131. 11.
ծ. Ելից. 20. 1.*
կ. Հռով. 3. 20.
Գաղա. 3. 19.
հ. Եբրա. 7. 18. և 10. 1.
ձ. Յովհ. 1. 29.
ղ. Հռով. 9. 5.

'ի գիրս հնոյ կտակարանին ստորագրեցեալ ցուցիւք, և ձևացուցեալ՝ (ա) 'ի վախճանի առաքեցեալ գոլ 'ի Հօրէ յայնմիկ ժամանակի, զոր առ իւր կացուցեալ էր ինքն Հայր. յայնմիկ ժամանակի ասեմ, յորում յաճախեր յաշխարհի ամենայն անիրաւութիւն: Բայց առաքեցեալ և ներմարմնացեալ Փրկիչն այն Յ՟Ք՟ (բ) զմահ կրեալ, և 'ի մեռելոց յարուցեալ գոլ. (գ) ոչ 'ի գործոց բարեաց ուրուք՝ (զի ամենեքեան էին մեղաւորք.) այլ որպէս զի Տ՟Ա՟ և Հայր մեր Ճշմարիտ, զառատացեալս շնորհի իւրոյ զփարթամութիւնս, զորս խոստացեալ էր՝ (դ) առհասարակ ծանուսցէ, և ըստ ողորմութեան իւրոյ փրկեալս զմեզ արասցէ: Սիրելի՛ ներ նորում կտակարանում բացայայտաբար ցուցանի, (ե) թէ Յ՟Ք՟ Ո՟Ա՟ Ճշմարիտ Գառն, և Ճշմարիտ զոհ աշխարհի, (զ) զմեղս մարդկան ջնջող եկն յաշխարհ, (է) զի մեզ զխաղաղութիւն ընդ Հօր՝ և առաջի նորա գտանել զշնորհս՝ առատանայցէր, (ը) լուանալով զմեզ 'ի մեղաց մերոց արեամբն իւրով. (թ) և ազատիցէր 'ի ծառայութենէ բելիարայ, (որում մեղանչելով ծառայէաք) (ժ) և յորդիս Ա՟Յ՟ որդեգրեցեալք լինէաք 'ի ձեռն նորին, (ի) և ժառանգակիցք նո՟ր լինիցեաք արքայութեան պայծառագունի, և յաւիտենականի:

Բայց որպէս զի շեղակամս զայս, և զյաւէտ մեծագոյն զԱ՟Յ՟ բարերարութիւն առ մեզ Ճանաչիցեմք, (լ) տայ մեզ Տ՟Ա՟ զՀոգի իւր սուրբ, որոյ պտուղ և գործն՝ է հաւատն որ առ Տ՟Ա՟, և առ Ք՟Ս՟ նորին: (խ) զի թարց Հոգւոյն սրբոյ՝ (որով ուսուցանիմք՝ և կնքիմք) ոչ ևս հաւատալ կարեմք՝ Տ՟Ա՟ Հայր առաքեալ գոլ զՄեսիայն, և ոչ զՅ՟Ք՟ գոլ Ք՟Ս՟ն: (ծ) զի ոչ ոք (ասէ Պօղոս) ասել կարէ, Տէր Յ՟Ք՟, եթէ ոչ Հոգւովն սրբով: (կ) Նոյն Հոգին վկայէ հոգւոյս մերում, եթէ եմք որդիք Ա՟Յ՟. (հ) և հեղու 'ի սիրտս մեր զՍէրն զայն, (ձ) զոր ստորագրեաց Պօղոս Կորնթացւոցն: Բաց յայսմանէ (ղ) զՅոյսն, որ է ստոյգ ակնկալութիւն կենին յաւիտենականի, որոյ նոյն ինքն է առհաւատչեայ և գրաւական, (ճ) մեզ պարգևէ, և զայլս հոգևորական պարգևս, զորոյ Պօղոս առ Գաղատացիս գրէ: Սիրելի՛ ոչինչ կերպիւ խառնդամելի է, կամ փոքրկացուցանելի պտուղն հաւատոյ: Վասնզի այսու ապաւինութեամբ 'ի Ք՟Ս՟, (մ) և հաւատով, որ 'ի ձեռն սիրոյ գործէ, և զիւր ինքն գործովք սիրոյն արտայայտէ՝ առ այնս զմարդն շարժեալ, արդարանամք, և սրբիմք: Ա՟յսէ, Տ՟Ա՟ և Հայր Տ՟Ն՟ մերոյ Յ՟Ն՟ Ք՟Ն՟, (յ) որ և Հայր մեր եղև 'ի ձեռն ինքեան եղբօր մերոյ, զմեզ փոխանակ արդարոց և սրբոց ունի, շնորհիւ իւրով, (ն) և արդեամբ Որդւոյ իւրոյ Յ՟Ն՟ Ք՟Ն՟, (շ) ոչ համարելով մեզ առ գեհեանն զյանցանս մեր:

Յետ այսորիկ եկն Ք՟Ս՟ ինքնին յաշխարհ. (ո) զի մեք 'ի ձեռն նորին սրբեալք, և մաքրեալք 'ի մեղաց, զկամս նորա բարեօք գործովք կատարելով (չ) զայնս որք մարմնոյ են՝ 'ի բաց ուրասցուք, և ազատաբար ծառայեսցուք նմա արդարութեամբ, և սրբութեամբ, զամենայն աւուրս մեր. (պ) և որպէս զի 'ի ձեռն բարեաց գործոց՝ (զորս նախապատրաստեաց Տ՟Ա՟ զի շրջիցեաք 'ի նոսին) զմեզ ցուցցուք առ այս շնորհս, և հաւատոյ պարգև հրաւիրեալս. (ջ) զորս արդարև զգործս բարիս որ ոչ ունի՝ վկայէ զինքենէ, զհաւատն որ առ Ք՟Ս՟ ոչ ունիլ, զորպիսի նա 'ի մէնջ խնդրէ:

Ա՟ռ նա մեզ պարտ է մատչիլ, և խոյտացելով հոգւով նմա հետևիլ. զի Ք՟Ս՟ զմեզ ուսուցէ. (ռ) քանզի է մեր վարդապետ, (ս) հեզ և խոնարհ սրտիւ: (վ) Նախագաղափար և յարացոյց մեր, յորմէ ուսանիլ պարտ է զքանոն ուղղապէս կելոյ: Բաց յայսմանէ՝ է մեր (տ) Եպիսկոպոս, և (ր) վեհագոյն Քահանայապետ, որ ինքն զիւր արիւնն վասն մեր մատոյց. (ց) մի միջնորդ Ա՟Յ՟ և մարդկան. որ այժմ ընդ աջմէ Ա՟Յ՟ Հօր նստի. (ւ) եղեալ Մեզ փաստաբան, բարեխօս, և միջնորդ վասն մեր. որ առանց երկբայութեան առ ընկալցի զորինչ 'ինմանէ, (փ) կամ նորին անուամբ 'ի Հօրէ խնդրեսցուք. (ք) միայն թէ խնդրողքս այնպէս զնա առնելոյ գոլ հաւատայցեմք. զի այսպէս խոստացաւ: Ապաշխարեմք մի՛ երկմտիցուք, եթէ երբեմն մեղանչիցեմք, հանդերձ ապաշխարութեամբ, (առ որ զմեզ (օ) խոկոյն 'ի սկզբան իւրոյ քարոզութեան հրաւիրէ, և յորդորէ) (ֆ) և համարձակութեամբ մատչիլ առաջի աթոռոյ շնորհաց նորա. հաւատացեալք թէ ողորմութեան նո՟ր հասանելոց եմք: (գ) քանզի վասն այնորիկ եկն յաշխարհ, զի զմեղաւորս իւրովն շնորհիւ կեցուսցէ:

Սա է արդարև Ք՟Ս՟ Յ՟Ս՟, (դ) որ 'ի մասին ժամանակի սահմանեցելոյ 'ի Գ... Հօրէ

ա. Ղուկ. 1. 31: Գաղատ. 4. 4: Եփես. 1. 10: բ. Հռոմ. 5. 9: գ. Եփես. 2. 9: Տիտ. 3. 5: դ. Հռոմ. 15. 8: Եփես. 2. 7: Տիտ. 3. 5: ե. Եսայ. 53. 7: Յովհ. 1. 29: Եփես. 5. 2: Եբր. 9. 26: ի. Կողոս. 3. 19: է. Եփես. 2. 14. և 15: ը. Յակ. 1. 5: Եբր. 2. 14: Հռոմ. 8. 15: Գաղատ. 4. 5: Եփես. 1. 5: Հռոմ. 8. 17: Եփես. 3. 6: Գաղատ. 4. 7: Գաղատ. 5. 22: Եփես. 1. 13: և 4. 30: Ա. Կոր. 12. 3: Հռոմ. 8. 16: Հռոմ. 5. 5: Ա. Կոր. 13. 4: Եփես. 1. 14: Գաղատ. 5. 22: Գաղատ. 5. 6: Եփես. 5. 2: Եբր. 2. 11: Եբր. 13. 21: Բ. Կոր. 5. 19: Հռոմ. 3. 30: և 4. 2: Գաղատ. 2. 16: Մատ. 5. 48: Տիտ. 2. 12. 13. և 14: Ղուկ. 1. 74: Եփես. 2. 10: Բ. Պետ. 1. 10: Մատ. 23. 8: Մատ. 11. 29: Յովհ. 13. 15: Ա. Պետ. 2. 25: Եբր. 4. 14: Ա. Տիմ. 2. 5: Ա. Յովհ. 2. 1: Յովհ. 14. 13: և 16. 23: Մարկ. 11. 24: Մատ. 4. 17: Եբրայ. 4. 16: Ա. Տիմ. 1. 15: Մատ. 25. 13:

Հօրն՝ եկեսցէ · (շ) և նստցի մեծաւ հանդիսաւորութեամբ 'ի դատել զամենեսեան, և հատուցանել իւրաքանչիւրում զլատուկս մարմնոյ ըստ որում գործեաց, կամ զբարի, կամ զչար ։ և ասելոց է այնոցիկ, որք ընդ աջմէն իցեն, որք նայում աշխարհում բարեացն հանդերձելոց ( այսինքն կենացն յաւիտենականաց ) անկիւղեալք իցեն · (ո) Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւն 'ի սկզբանէ աշխարհի ։ Իսկ այնոցիկ, որք յահեկէն, Երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական, որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա ։ (չ) Յայնժամ իսկ եղիցի կատարած, յորժամ Ք՞ս զամ թշնամիս բոլորովին յաղթեալ՝ զարքայութիւն Տ՞ն և Հօր աւանդեսցէ ։

Աջմէն յաւիտենական ։ Ահեակ յաւիտենական ։

Զայսոսիկ որպէս զի կարասցուք ճանաչել՝ բարութեամբ Տ՞ն, (պ) 'ի ձեռն Հոգւոյ նորին սրբոյ տուեալ եղև մեզ սրբազան Աստուածաշունչ Գիրն, և նորին վարդապետութիւն, որ 'ի նմին պարունակի՝ քարոզութիւնն, և Խորհուրդք, որովք կնքի 'ի մեզ այսորիկ վարդապետութեան ճշմարտութիւն · (ջ) զի ճանաչիցեմք զնա, և հաւատասցեմք, զմի միայն գոլ ճշմարիտ Ա՞ծ, և զոր ( ում խոստացեալ էր ) առաքեաց՝ զՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ · և որպէս զի հաւատացեալք՝ զկեանս ունիցիմք յանուն նորա ։

Բայց յայսմանէ (ռ) զայլ իմն հիմն ոչ ոք կարէ դնել Եկեղեցւոյ Ք՞ի, որով արդարև հաստատուն և անշարժ կայանայ ։ (ս) Եւ՛ ըղձայ Պօղոս այնմիկ՝ նզով լինել, որ զայլ իմն հաւատ և զփրկութիւն քարոզեսցէ, քան որ Յ՞իս Ք՞իս, թէ և Հրեշտակ յերկնից իցէ ։

Վասն զի (վ) 'ի նմանէ, և նովաւ, և 'ի նոյն են ամենեքեան · որում հանդերձ Հարբ և Հոգւովն սրբով պատիւ և փառք յաւիտեանս յաւիտենից ։ Ա՞մէն ։

շ· 2·Տիմ·4·1։ 2·Կորն·5·10։
ո· Մատթ· 25· 34*։
չ· 1·Կորն·15·24։
պ· 2·Պետ·1·19։
ջ· Յոհ· 17·3։ և 20·30։
ռ· 1·Կորն·3·11։
ս· Գաղատ· 1·8։
վ· Հռոմ·11·36։

# ԿԱՐԳ ԳՐՈՑ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ·

## Հանդերձ Գլխովք ։



Հին Կտակարանի բովանդակ Գիրքն են 48· որոց 45· են կանոնականք, իսկ երեքն, այս· 1· և 4· Եզրասն, և 3· Մակաբայեցւոց են՝ արտաքոյ կանոնականաց ։

Հա_

## Համարողութե՛ն նշանք, ըստ Թուանշանաց տառից Հայոց համեմատեալ:

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | ա | 46 | խզ | 91 | ղա |
| 2 | բ | 47 | խէ | 92 | ղբ |
| 3 | գ | 48 | խը | 93 | ղգ |
| 4 | դ | 49 | խթ | 94 | ղդ |
| 5 | ե | 50 | ծ | 95 | ղե |
| 6 | զ | 51 | ծա | 96 | ղզ |
| 7 | է | 52 | ծբ | 97 | ղէ |
| 8 | ը | 53 | ծգ | 98 | ղը |
| 9 | թ | 54 | ծդ | 99 | ղթ |
| 10 | ժ | 55 | ծե | 100 | ճ |
| 11 | ժա | 56 | ծզ | 101 | ճա |
| 12 | ժբ | 57 | ծէ | 102 | ճբ |
| 13 | ժգ | 58 | ծը | 103 | ճգ |
| 14 | ժդ | 59 | ծթ | 104 | ճդ |
| 15 | ժե | 60 | կ | 105 | ճե |
| 16 | ժզ | 61 | կա | 106 | ճզ |
| 17 | ժէ | 62 | կբ | 107 | ճէ |
| 18 | ժը | 63 | կգ | 108 | ճը |
| 19 | ժթ | 64 | կդ | 109 | ճթ |
| 20 | ի | 65 | կե | 110 | ճժ |
| 21 | իա | 66 | կզ | 111 | ճժա |
| 22 | իբ | 67 | կէ | 112 | ճժբ |
| 23 | իգ | 68 | կը | 113 | ճժգ |
| 24 | իդ | 69 | կթ | 114 | ճժդ |
| 25 | իե | 70 | հ | 115 | ճժե |
| 26 | իզ | 71 | հա | 116 | ճժզ |
| 27 | իէ | 72 | հբ | 117 | ճժէ |
| 28 | իը | 73 | հգ | 118 | ճժը |
| 29 | իթ | 74 | հդ | 119 | ճժթ |
| 30 | լ | 75 | հե | 120 | ճի |
| 31 | լա | 76 | հզ | 121 | ճիա |
| 32 | լբ | 77 | հէ | 122 | ճիբ |
| 33 | լգ | 78 | հը | 123 | ճիգ |
| 34 | լդ | 79 | հթ | 124 | ճիդ |
| 35 | լե | 80 | ձ | 125 | ճիե |
| 36 | լզ | 81 | ձա | 126 | ճիզ |
| 37 | լէ | 82 | ձբ | 127 | ճիէ |
| 38 | լը | 83 | ձգ | 128 | ճիը |
| 39 | լթ | 84 | ձդ | 129 | ճիթ |
| 40 | խ | 85 | ձե | 130 | ճլ |
| 41 | խա | 86 | ձզ | 131 | ճլա |
| 42 | խբ | 87 | ձէ | 132 | ճլբ |
| 43 | խգ | 88 | ձը | 133 | ճլգ |
| 44 | խդ | 89 | ձթ | 134 | ճլդ |
| 45 | խե | 90 | ղ | 135 | ճլե |

| | |
|---|---|
| 136 | ճլզ |
| 137 | ճլէ |
| 138 | ճլը |
| 139 | ճլթ |
| 140 | ճխ |
| 141 | ճխա |
| 142 | ճխբ |
| 143 | ճխգ |
| 150 | ճծ |
| 151 | ճծա |
| 152 | ճծբ |
| 153 | ճծգ |
| 160 | ճկ |
| 161 | ճկա |
| 162 | ճկբ |
| 163 | ճկգ |
| 170 | ճհ |
| 171 | ճհա |
| 172 | ճհբ |
| 173 | ճհգ |
| 180 | ճձ |
| 181 | ճձա |
| 182 | ճձբ |
| 183 | ճձգ |
| 190 | ճղ |
| 191 | ճղա |
| 192 | ճղբ |
| 193 | ճղգ |
| 200 | մ |
| 201 | մա |
| 202 | մբ |
| 203 | մգ |
| 204 | մդ |
| 205 | մե |
| 206 | մզ |
| 207 | մէ |
| 208 | մը |
| 209 | մթ |

| | |
|---|---|
| 210 | մժ |
| 211 | մժա |
| 212 | մժբ |
| 213 | մժգ |
| 220 | մի |
| 221 | միա |
| 222 | միբ |
| 223 | միգ |
| 230 | մլ |
| 231 | մլա |
| 232 | մլբ |
| 233 | մլգ |
| 240 | մխ |
| 241 | մխա |
| 242 | մխբ |
| 243 | մխգ |
| 250 | մծ |
| 251 | մծա |
| 252 | մծբ |
| 253 | մծգ |
| 260 | մկ |
| 261 | մկա |
| 262 | մկբ |
| 263 | մկգ |
| 270 | մհ |
| 271 | մհա |
| 272 | մհբ |
| 273 | մհգ |
| 280 | մձ |
| 281 | մձա |
| 282 | մձբ |
| 283 | մձգ |
| 290 | մղ |
| 291 | մղա |
| 292 | մղբ |
| 293 | մղգ |

| | |
|---|---|
| 300 | յ |
| 301 | յա |
| 302 | յբ |
| 303 | յգ |
| 304 | յդ |
| 305 | յե |
| 306 | յզ |
| 307 | յէ |
| 308 | յը |
| 309 | յթ |
| 310 | յժ |
| 311 | յժա |
| 312 | յժբ |
| 313 | յժգ |
| 320 | յի |
| 321 | յիա |
| 322 | յիբ |
| 323 | յիգ |
| 324 | յիդ |
| 325 | յիե |
| 326 | յիզ |
| 327 | յիէ |
| 328 | յիը |
| 329 | յիթ |
| 330 | յլ |
| 340 | յխ |
| 350 | յծ |
| 360 | յկ |
| 370 | յհ |
| 380 | յձ |
| 390 | յղ |
| 400 | ն |
| 500 | շ |
| 600 | ո |
| 700 | չ |
| 800 | պ |
| 900 | ջ |
| 1000 | ռ |
| 10000 | ժռ |
| 100000 | ճռ |
| 1000000 | ռռ |



Եւ ասաց Այ. հանցեն ջուրք զեռունս շնչոյ կենդանեաց:



Եւ ասաց Այ, արասցուք մարդ ըստ պատկերի մերում:

# ԳԻՐՔ ԾՆՆԴՈՑ.

## ՈՐ ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑԻՈՑՆ
## ԲԱՐ ԲԵՐԵՍԻԹ.

Գլուխ Առաջներորդ.

Ի ՍԿԶԲԱՆԷ ԱՐԱՐ ԱՅ ԶԵՐԿԻՆՍ ԵՒ ԶԵՐԿԻՐ. *ԵՒ ԵՐԿԻՐ ԷՐ ԱՆԵՐԵՒՈՅԹ

2 և անպատրաստ. և խաւար 'ի վերայ անդնդոց. և Հոգի Այ շրջէր 'ի վերայ ջրոց. 3 *Եւ ասաց Այ. Եղիցի լոյս. և եղև լոյս. 4 *Եւ ետես Այ զլոյսն զի բարի է. և մեկնեաց Այ 'ի մէջ լուսոյն և 'ի մէջ խաւարին. 5 *Եւ կոչեաց Այ զլոյսն տիւ. և զխաւարն կոչեաց գիշեր. և եղև երեկոյ և եղև վաղորդեայն՝ օր մի. 6 *Եւ ասաց Այ. Եղիցի հաստատութիւն 'ի մէջ ջրոց. և եղիցի մեկնել 'ի մէջ ջրոյ, և ջրոյ. և եղև այնպէս.

7 *Եւ արար Այ զհաստատութիւնն. և մեկնեաց Այ 'ի մէջ ջրոյն, որ էր 'ի ներքոյ հաստատութեանն. և 'ի մէջ 8 ջրոյն, որ 'ի վերայ հաստատութեանն. *Եւ կոչեաց Այ զհաստատութիւնն երկին. և ետես Այ զի բարի է. և եղև երեկոյ և եղև վաղորդեայն, օր երկրորդ. 9 *Եւ ասաց Այ. Ժողովեսցին ջուրքն որք 'ի ներքոյ երկնից 'ի ժողով մի, և երևեսցի ցամաքն. և եղև այնպէս. և ժողովեցան ջուրքն, որք 'ի ներքոյ երկ-

նից

Սաղմ. 32.6. և 135.5. Սիրաք. 18.1. Գործ. 14. 14. և 17.24

Եբր. 11.3.

Սաղմ. 135. 6. և 148.4 Երեմ. 10. 12. և 51.15 Սաղմ. 32.7.

A

նից 'ի ժողովս իւրեանց. և երևեցաւ ցամաքն։ 10 Եւ կոչեաց Ած զցամաքն երկիր. և զժողովս ջուրցն կոչեաց ծովս. և ետես Ած զի բարի է։ 11 Եւ ասաց Ած. բղխեսցէ երկիր զբանջար խոտոյ. սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան. և ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ ազգի իւրում. որոյ սերմն իւր 'ի նմին ըստ ազգի 'ի նմանութիւն 'ի վերայ երկրի։ և եղև այնպէս։ 12 Եւ եհան երկիր զբանջար խոտոյ. սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան. որ է 'ի վերայ ամ երկրի. և զծառ պտղաբեր՝ առնել պտուղ. որոյ սերմն իւր 'ի նմին ըստ ազգի 'ի վերայ երկրի. և ետես Ած զի բարի է։ 13 Եւ եղև երեկոյ, և եղև վաղորդեայն, օր երրորդ։ 14 Եւ ասաց Ած. եղիցին լուսաւորք 'ի հաստատութեան երկնից 'ի լուսաւորութիւն 'ի վր երկրի։ և մեկնել 'ի մէջ տուընջեան և 'ի մէջ գիշերոյ. և եղիցին 'ի նշանս, և 'ի ժամանակս. և յաւուրս. և 'ի տարիս։ 15 Եւ եղիցին 'ի լուսաւորութիւն 'ի հաստատութեան երկնից ծագել յերկիր։ և եղև այնպէս։ 16 Եւ արար Ած զերկուս լուսաւորսն զմեծամեծս։ զլուսաւորն մեծ՝ յիշխանութիւն տուընջեան. և զլուսաւորն փոքր՝ յիշխանութիւն գիշերոյ. և զաստեղս։ 17 Եւ եդ զնոսա Ած 'ի հաստատութեան երկնից. լուսատու լինել յերկիր։ 18 Եւ իշխել տուընջեան և գիշերոյ։ և մեկնել 'ի մէջ լուսոյն և 'ի մէջ խաւարին։ և ետես Ած զի բարի է։ 19 Եւ եղև երեկոյ և եղև վաղորդեայն, օր չորրորդ։ 20 Եւ ասաց Ած. հանցեն ջուրք զեռունս շնչոց կենդանեաց. և թռչունս թևաւորս 'ի վր երկրի ըստ հաստատութեան երկնից։ և եղև այնպէս։ 21 Եւ արար Ած կէտս մեծամեծս. և զամ շունչ զեռնոց կենդանեաց, զոր հանին ջուրք ըստ ազգի իւրեանց. և զամ թռչուն թևաւոր ըստ ազգի։ և ետես Ած զի բարի են։ 22 Եւ օրհնեաց զնոսա Ած. և ասէ. աճեցէք. և բազմացարուք. և լցէք զջուրս որք 'ի ծովս։ և թռչունք բազմասցին 'ի վերայ երկրի։ 23 Եւ եղև երեկոյ, և եղև վաղորդեայն, օր հինգերորդ։ 24 Եւ ասաց Ած. հանցէ երկիր շունչ կենդանի ըստ ազգի չորքոտանի. և սողունս. և գազանս երկրի ըստ ազգի։ և եղև այնպէս։ 25 Եւ արար Ած զգազանս երկրի ըստ ազգի. և զանասունս ըստ ազգի. և զամ սողունս երկրի ըստ ազգի իւրեանց։ և ետես Ած զի բարի են։ 26 Եւ ասաց Ած. արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան, և իշխեսցէ ձկանց ծովու. և թռչնոց երկնից. և անասնոց. և ամ երկրի. և ամ սողնոց՝ որք սողին 'ի վր երկրի։ 27 Եւ արար Ած զմարդն 'ի պատկեր իւր. ըստ պատկերի Այ արար զնա։ 28 արու և էգ արար զնոսա։ Եւ օրհնեաց զնա Ած և ասէ. աճեցէք՝ և բազմացարուք՝ և լցէք զերկիր. և տիրեցէք դմա. և իշխեցէք ձկանց ծովու. և թռչնոց երկնից։ և ամ անասնոց. և ամ երկրի. և ամ սողնոց որք սողին 'ի վերայ երկրի։ 29 Եւ ասաց Ած. ահաւադիկ ետու ձեզ զամ խոտ սերմանելի սերմանել սերմն, որ է 'ի վր ամ երկրի. և զամ փայտ որ ունիցի յինքեան պտուղ սերման սերմանելոյ, 30 ձեզ լիցի 'ի կերակուր. Եւ ամ գազանաց երկրի. և ամ թռչնոց երկնից. և ամ սողնոց՝ որք սողին 'ի վր երկրի՝ որ ունիցի շունչ կենդանի. և ամ խոտ դալար 'ի կերակուր։ և եղև այնպէս։ 31 Եւ ետես Ած զամ զոր արար, և ահա բարի են յոյժ։ և եղև երեկոյ. և եղև վաղորդեայն, օր վեցերորդ։

## ԳԼ. Բ.

1 Եւ կատարեցան երկինք և երկիր և ամ զարդ նոցա։ 2 Եւ կատարեաց Ած յաւուրն վեցերորդի զգործս իւր՝ զոր արար։ և հանգեաւ յաւուրն եօթներորդի յամ գործոց 3 իւրոց՝ զոր արար։ Եւ օրհնեաց Ած զօրն եօթներորդ, և սրբեաց զնա. զի 'ի նմա հանգեաւ յամենայն գործոց իւրոց՝ զոր սկսաւ առնել Ած։ 4 Այս է գիր արարածոց երկնի և երկրի, յաւուր յորում արար Ած զերկինս 5 և զերկիր։ Եւ զամ բանջար վայրի՝ մինչչև լեալ էր 'ի վր երկրի. և զամ խոտ վայրի մինչչև բուսեալ էր, զի չև ևս էր տեղացեալ Տն Այ 'ի վր երկրի. և մարդ չէր՝ որ գործէր զերկիր։ 6 Բայց աղբիւր ելանէր յերկրէ՝ և ոռոգանէր զամ երեսս երկրի։ 7 Եւ ստեղծ Տր Ած զմարդն հող յերկրէ. և փչեաց յերեսս նր շունչ կենդանի. և եղև մարդն յոգի կենդանի։ 8 Եւ տնկեաց Ած զդրախտն յեդեմ ընդ արևելս, և եդ անդ զմարդն զոր 9 ստեղծ։ Եւ բուսոյց ևս Տէր Ած յերկրէ զամ ծառ գեղեցիկ 'ի տեսանել՝ և քաղցր 'ի կերակուր. և զծառն կենաց 'ի մէջ դրախտին, և զծառն գիտելոյ զգիտութիւն բարւոյ և չարի։ 10 Եւ գետ ելանէր յեդեմայ ոռոգանել զդրախտն. և անտի բաժանի 'ի չորս

Յոբ. 38.4. Սաղմ. 32.7. և 88. 12. և 135.6. Սաղմ. 135.7.

Սաղմ. 5.1. և 9.6. 1. Կոր. 11.7. Կող. 3.10. Իմաս. 2.23. Սիրաք. 17.1. Մատ. 19.4. Սաղմ. 8.15. և 9.1. Սաղմ. 9.3. Սիրաք. 39.21. Մարկ. 7.37.

Ելից. 20.11. և 31.17. 2.( )րէն 5.14. Եբրայ. 4.4. 1. Կոր. 15.45.

‖ Սիրաք. 24.35.

ի չորս առաջս ։ * ‖ Անուն միոյն Փի_ 11
սոն ․ Նա է որ պատէ զամենայն եր_
կիրն Եւիլատայ ․ անդ ուր ոսկին է ։
* Եւ ոսկի երկրին այնորիկ ազնիւ ․ 12
և անդ է ակն սուտակ՝ և դահանակ ։
* Եւ անուն գետոյն երկրորդի Գե_ 13
հոն ։ Նա պատէ զամ երկիրն Եթով_
պացւոց ։ * Եւ գետն երրորդ՝ Տիգ_ 14
րիս ։ Նա է որ երթայ յանդիման ասո_
րեստանի ։ Եւ գետն չորրորդ Եփրա_
տէս ։ * Եւ էառ Տր Ա.ծ զմարդն, զոր 15
արար ․ և եդ զնա 'ի դրախտին փափ_
կութեան ․ գործել զնա և պահել ։
* Եւ պատուիրեաց Տր Ա.ծ ադամայ՝ 16
և ասէ ։ յամ ծառոց որք են 'ի դրախ_
տիդ՝ ուտելով կերիցես ։ * Բայց 'ի 17
ծառոյն գիտութեան բարւոյ և չարի մի՛
ուտիցէք ։ զի յորում աւուր ուտիցէք
'ի նմանէ՝ մահու մեռանիցիք ։ * Եւ 18
ասաց Տէր Ա.ծ , ո՛չ է բարւոք մար_
դոյդ միայն լինել ․ արասցուք դմա
օգնական ըստ դմա ։ * Եւ ստեղծ ևս 19
Տր Ա.ծ զամ գազանս վայրի ․ և զամ
թռչունս երկնից ․ և էած զնոսա առ
ադամ, տեսանել զինչ կոչեսցէ զնո ։
և ամ շնչոյ կենդանեաց, զինչ և անուա_
նեաց ադամ, այն անուն է նր ։ * Եւ 20
կոչեաց ադամ անուանս ամ անասու_
նոց ․ և ամ թռչնոց երկնից ․ և ամ գա_
զանաց վայրի ։ բայց ադամայ ո՛չ գտաւ
օգնական նման նմա ։ * Եւ էարկ 21
Տր Ա.ծ թմրութիւն 'ի վ՟ր ադամայ ,
և ննջեաց ․ և էառ մի 'ի կողից նորա և
ելից ընդ այնր մարմին ․ * Եւ շինեաց 22
Տէր Ա.ծ զկողն զոր էառ յադամայ
'ի կին ․ և էած զնա առ ադամ ։ * Եւ 23
ասէ ադամ ․ այս այժմիկ ‖ ոսկր յոս_
կերաց իմոց ․ և մարմին 'ի մարմնոյ
իմմէ ։ սա կոչեսցի կին ․ զի յառնէ իւր
մէ առաւ ։ * ‖ Վ՟ա այնորիկ թողցէ 24
այր զհայր իւր՝ և զմայր իւր ․ և եր_
թիցէ զհետ կնոջ իւրոյ ։ * Եւ եղի_ 25
ցին երկուքն 'ի մարմին մի ։ Եւ էին եր
կոքեանն մերկ՝ ադամ և կինն իւր ․
և ո՛չ ամաչէին ։

‖ 1. Կոր. 11.8. ‖ Մատթ. 19. 5. Մարկ. 10. 7. Եփես. 5.31. 1. Կորն. 6.16.

## ԳԼ ։ Գ ։

‖ Իմաս. 2.24.

Եւ ‖ օձն էր իմաստնագոյն քան 1
զամ գազանս որ 'ի վերայ եր_
կրի , զոր արար Տր Ա.ծ ։ և ասէ օձն
ցկինն ․ զի՞ է զի ասաց Ա.ծ, թէ յամ
ծառոց որք իցեն 'ի ներքս 'ի դրախտի
այդր՝ մի՛ ուտիցէք ։ * Եւ ասէ կինն 2
ցօձն ։ 'ի պտղոյ ծառոց դրախտիդ կե_
րիցուք ։ * Բայց 'ի պտղոյ ծառոյն, որ 3
է 'ի մէջ դրախտին , ասաց Ա.ծ , մի՛
ուտիցէք 'ի նմանէ ․ և մի՛ հուպ լինի_
ցիք՝ զի մի՛ մեռանիցիք ։ * Եւ ասէ օձն 4



ցկինն ․ ‖ ո՛չ եթէ մահու մեռանիցիք ։
5 * Զի գիտէր Ա.ծ, թէ յորում աւուր
ուտիցէք 'ի նմանէ , բանային աչք
ձեր ․ և լինիցիք իբրև զԱ.ծս ․ գիտա_
6 ցել զբարի և զչար ։ * Եւ ետես կինն ,
զի բարի էր ծառն 'ի կերակուր ․ և
հաճոյ աչաց հայելոյ ․ և գեղեցիկ 'ի
տեսանել ։ և էառ 'ի պտղոյ նորա ‖ և
եկեր ․ և ետ առն իւրում ընդ իւր , և
7 կերին ։ * Եւ բացան աչք երկոցունցն ․
և գիտացին զի մերկ էին ։ և կարե_
ցին տերև թզենւոյ ․ և արարին իւր
8 եանց սփածանելիս ։ * Եւ լուան
զձայն զգնալոյ Տն Ա.յ 'ի դրախտի
անդ ընդ երեկս ․ և թաքեան ադամ
և կին իւր յերեսաց Տն Ա.յ՝ 'ի մէջ
9 ծառոց դրախտին ։ * Եւ կոչեաց Տր
Ա.ծ զադամ ․ և ասէ ցնա ․ ու՞ր ես ։

‖ 2. Կոր. 11.3. ‖ Սիրաք. 25.33. 1. Տիմ. 2.14.



10 * Եւ ասէ ․ լուայ զձայն քո 'ի դրախտի
աստ՝ և երկեայ ․ քանզի մերկ էի՝ և
11 թաքեայ ։ * Եւ ասէ ցնա ․ ո՞ պատ_
մեաց քեզ թէ մերկ ես ։ բայց թէ 'ի
ծառոյն՝ յորմէ պատուիրեցի քեզ ան
տի և եթ չուտել, կերե՞ր արդեօք 'ի
12 նմանէ ։ * Եւ ասէ ադամ ․ կինն զոր
ետուր ընդ իս՝ սա ետ ինձ 'ի ծառոյ
13 անտի և կերի ։ * Եւ ասէ Տէր Ա.ծ
ցկինն ․ զինչ գործեցեր զայդ ։ և ասէ
14 կինն ․ օձն խաբեաց զիս , և կերի ։ * Եւ
ասէ Տր Ա.ծ ցօձն ․ փոխանակ զի ա_
րեր դու զայդ , անիծեալ լիջիր դու
յամ անասնոց և յամ գազանաց երկ_

րի. 'ի վերայ լանջաց և որովայնի քո գնասցես. և հող կերիցես զա՟մ աւուրս կենաց քոց: *Եւ եդից թշնամութիւն 'ի մէջ քո և 'ի մէջ կնոջդ. և 'ի մէջ զաւակի քո և 'ի մէջ զաւակի դորա. նա սպասեսցէ քում գլխոյ. և դու սպասեսցես նորա գարշապարի: *Եւ ցկինն ասէ. բազմացուցանելով բազմացուցից զտրտմութիս քո և զհեծութիս. տրտմութեամբ ծնցիս որդիս. և առ այր քո դարձ քո. || և նա տիրեսցէ քեզ: *Եւ ցԱդամ ասէ. փոխանակ զի լուար ձայնի կնոջդ քո. և կերեր 'ի ծառոյ անտի, յորմէ պատուիրեցի քեզ անտի միայն չուտել. և կերեր 'ի նմանէ, անիծեալ լիցի երկիր 'ի գործս քո. տրտմութեամբ կերիցես զնա զա՟մ աւուրս կենաց քոց: *Փուշ և տատասկ բուսուսցէ քեզ. և կերիցես զբանջար վայրի: *Քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո. մինչև դարձցիս յերկիր, ուստի առար. զի հող էիր և 'ի հող դարձցիս: *Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ կեանս. զի նա է մայր ա՟մ կենդանեաց: *Եւ արար Ա՟ծ Ադամայ և կնոջ ն՟ր հանդերձս մաշկեղէնս, և զգեցոյց զն՟ս. *Եւ ասէ Տ՟ր Ա՟ծ. ահա Ադամ եղև իբրև զմի 'ի մէնջ՝ գիտել զբարի և զչար. և արդ՝ գուցէ ձգիցէ զձեռն, և առնուցու 'ի ծառոյն կենաց. ուտիցէ, և կեցցէ յաւիտեան: *Եւ էհան արձակեաց զնա Տէր Ա՟ծ 'ի դրախտէ անտի փափկութեան՝ գործել զերկիր՝ ուստի առաւ: *Եւ էհան զԱդամ, և բնակեցոյց յանդիման դրախտին փափկութեան: և հրամայեաց քրովբէից, և բոցեղէն սրոյ շուրջանակի պահել զճանապարհս ծառոյն կենաց:

Ա. Կոր. 14.34.

ԳԼ: Դ:

Եւ Ադամ գիտաց զԵւայ կին իւր, և յղացաւ. և ծնաւ զկայէն և ասէ. ստացայ մարդ Ա՟ծ: *Եւ յաւել ծնանել զեղբայր ն՟ր զհաբէլ: և եղև հաբէլ հովիւ խաշանց. և կայէն գործէր զերկիր: *Եւ եղև յետ աւուրց եբեր կայէն 'ի պտղոյ երկրի պատարագ Ա՟ծ: *Եւ ած || և հաբէլ յանդրանկաց խաշանց իւրոց և 'ի պարարտաց ն՟ց: և հայեցաւ Ա՟ծ 'ի հաբէլ և 'ի պատարագս ն՟ր: *Եւ 'ի կայէն և 'ի զոհս ն՟ր ոչ նայեցաւ: և տրտմեցաւ կայէն յոյժ. և խոնարհեցան անկան երեսք իւր: *Եւ ասէ Տէր Ա՟ծ ցկայէն. ընդէ՞ր տրտմեցար. կամ ընդէ՞ր խոնարհեցան անկան երեսք քո:

Եբր. 11.4.

7 *Ոչ ապաքէն թէ ուղիղ մատուցանես. և ուղիղ ոչ բաժանես՝ մեղար. լո՛ւռ լեր. առ քեզ լիցի դարձ նորա. և դու տիրեսցես նմա:



8 *Եւ ասէ կայէն ցհաբէլ եղբայր իւր. եկ երթիցուք 'ի դաշտ: և եղև իբրև էին 'ի դաշտի անդր. յարեաւ կայէն 'ի վ՟ր հաբէլի եղբօր իւրոյ || և սպան զնա. 9 *Եւ ասէ Տէր Ա՟ծ ցկայէն. ո՞ւր է հաբէլ եղբայր քո. և նա ասէ՝ || ոչ գիտեմ. մի թէ պահապա՞ն իցեմ ես 10 եղբօրն իմոյ: *Եւ ասէ Ա՟ծ. զի՞նչ գործեցեր զայդ. ձայն արեան եղ 11 բօր քո բողոքէ առ իս յերկրէ: *Եւ արդ՝ անիծեալ լիջիր դու 'ի վերայ երկրի, որ եբաց զբերան իւր ընդունել զարիւն եղբօր քո 'ի ձեռաց քոց: 12 *Օր գործեսցես զերկիր՝ և ոչ յաւելցի տալ քեզ զզօրութիւն իւր. երերեալ և տատանեալ եղիցիս 'ի վ՟ր եր 13 կրի: *Եւ ասէ կայէն ցՏ՟ր Ա՟ծ. մեծ է պատիժ իմ քան զթողուլդ զիս: 14 *Եթէ հանես զիս այսօր յերեսաց երկրի. և յերեսաց քոց թաքեայց. և լինիցիմ երերեալ և տատանեալ յերկրի. և եղիցի ա՟մ որ գտանէ զիս՝ սպան 15 ցէ զիս: *Եւ ասէ ցնա Տ՟ր Ա՟ծ. ոչ այդպէս: ա՟մ որ սպանանէ զկայէն, եօթն վրէժս լուծցէ: և եդ Տէր Ա՟ծ նշան 'ի կայէն՝ չսպանանել զնա, ա՟մ որ 16 գտանիցէ զնա: *Եւ ել կայէն յերեսաց Տ՟ն. և բնակեցաւ յերկրին նայիդ-

յան-

[illegible] 10.3. Մատթ. 23.35. Ա. Յովհ. 3.12. Յուդայ 1.11.

յանդիման եդեմայ։ * Եմուտ կային 17
առ կին իւր, եւ յղացաւ, եւ ծնաւ զե-
նոք. եւ շինէր քաղաք. եւ դնէր անուն
քաղաքին յանուն որդւոյ իւրոյ։ * Եւ 18
եղեւ որդի ենոքայ գայերիդադ։ եւ
գայերիդադ ծնաւ զմայիէլ. եւ մայիէլ
ծնաւ զմաթուսաղա։ եւ մաթուսա-
ղա ծնաւ զղամէք։ * Եւ էառ իւր 19
ղամէք երկուս կանայս. անուն միոյն
ադդա. եւ անուն երկրորդին սեղլա։
* Եւ ծնաւ ադդա զյոբէլ. նա է հայր 20
այնոցիկ որք բնակեալ էին ՚ի վրանս.
խաշնարածաց։ * Եւ անուն եղբօր 21
նր յոբալ։ նա էր հայր՝ որ եցոյց զերգս
եւ զքնարս։ * Եւ սեղլա ծնաւ զթո- 22
բել։ եւ էր ճարտարապետ դարբին
պղնձոյ եւ երկաթոյ. եւ քոյր թոբե-
լայ նոեմայ։ * Եւ ասէ ղամէք ցկա- 23
նայս իւր ցադդա եւ ցսեղլա։ լուա-
րուք ձայնի իմում կանայք ղամէքայ.
եւ ունկնդիր լիք բանից իմոց. զի այր սպա-
նի՝ ՚ի վէրս ինձ. եւ երիտասարդ ՚ի
հարուածս ինձ։ * Զի եթէ եօթն 24
անգամ վրէժք խնդրեցին ՚ի կայե-
նէ։ ապա ՚ի ղամէքայ եօթանասնեկի
եօթն։ * Եմուտ ադամ առ եւայ կին 25
իւր, եւ յղացաւ, եւ ծնաւ որդի. եւ
անուանեաց զանուն նր սէթ. ասէ։
զի յարոյց ինձ Ած զաւակ այլ փո-
խանակ հաբէլի, զոր սպան կայէն։
* Եւ սէթայ եղեւ որդի. եւ անուա- 26
նեաց զանուն նորա ենոս. նա յու-
սացաւ կոչել զանուն Տն Այ։

## ԳԼ։ Ե.

Այս է գիր արարածոց մարդկան.
յաւուր յորում արար Ած զա- 1
դամ։ ‖ ըստ պատկերի Այ արար զնա.
* Արու եւ էգ արար զնս. եւ օրհնեաց 2
զնս. եւ անուանեաց զանուն նց ադամ,
յաւուր յորում արար զնս։ * Եկեաց 3
ադամ ամս հարիւր եւ երեսուն. եւ
ծնաւ ըստ կերպարանաց իւրոց եւ
ըստ պատկերի իւրում. եւ անուա-
նեաց զանուն նորա սէթ։ * Եւ եղեն 4
‖ աւուրք ադամայ յետ ծնանելոյն
նորա զսէթ՝ ամք ութնհարիւր. եւ
ծնաւ ուստերս եւ դստերս։ * Եւ 5
եղեն ամենայն աւուրք ադամայ զորս
եկեաց, ամք ինն հարիւր եւ երեսուն.
եւ մեռաւ։ * Եւ եկեաց սէթ ամս 6
երկերիւր եւ հինգ. եւ ծնաւ զենովս։
* Եւ եկեաց սէթ յետ ծնանելոյ նր 7
զենոս՝ ամս եօթն հարիւր եւ եօթն. եւ
ծնաւ ուստերս եւ դստերս։ * Եւ ե- 8
ղեն ամ աւուրք սէթայ՝ ամք ինն հա-
րիւր եւ երկոտասան. եւ մեռաւ։ * Եւ 9

Ը Իմաստ. 2.24. Սիրաք. 17.1. Մատթ. 19.6. Ա Մն. 1.1.

եկեաց ենոս ամս հարիւր եւ իննսուն,
10 եւ ծնաւ զկայնան։ * Եւ եկեաց ենոս,
յետ ծնանելոյն նորա զկայնան՝ ամս
եօթն հարիւր եւ հնգետասան. եւ
11 ծնաւ ուստերս եւ դստերս։ * Եւ եղեն
ամ աւուրք ենոսայ՝ ամք իննհարիւր եւ
12 հինգ։ եւ մեռաւ։ * Եւ եկեաց կայնան
ամս հարիւր եւ եօթանասուն. եւ ծնաւ
13 զմաղաղեէլ։ * Եւ եկեաց կայնան
յետ ծնանելոյ նորա զմաղաղէէլ, ամս
եօթնհարիւր եւ քառասուն. եւ ծնաւ
14 ուստերս եւ դստերս։ * Եւ եղեն ամ
աւուրք կայնանայ՝ ամք իննհարիւր
15 եւ տասն. եւ մեռաւ։ * Եւ եկեաց մա
ղաղէէլ ամս հարիւր եւ վաթսուն եւ
16 հինգ. եւ ծնաւ զյարեդ։ * Եւ եկեաց
մաղաղէէլ յետ ծնանելոյ նորա զյա
րեդ՝ ամս եօթնհարիւր եւ երեսուն.
17 եւ ծնաւ ուստերս եւ դստերս։ * Եւ
եղեն ամ աւուրք մաղաղեէլի՝ ամք
ութ հարիւր իննսուն եւ հինգ. եւ մե-
18 ռաւ։ * Եւ եկեաց յարեդ ամս հա-
րիւր վաթսուն եւ երկուս, եւ ծնաւ
19 զենոք։ * Եւ եկեաց յարեդ յետ ծնա-
նելոյ նորա զենոք՝ ամս ութ հարիւր.
20 եւ ծնաւ ուստերս եւ դստերս։ * Եւ
եղեն ամենայն աւուրք յարեդի՝ ամք
իննհարիւր վաթսուն եւ երկու. եւ մե-
21 ռաւ։ * ‖ Եւ եկեաց ենոք ամս հարիւր
վաթսուն եւ հինգ, եւ ծնաւ զմաթու-
22 սաղա։ * Եւ հաճոյ եղեւ ենոք Այ. եւ
եկեաց յետ ծնանելոյ նր զմաթուսա-
ղա՝ ամս երկերիւր։ եւ ծնաւ ուստերս
23 եւ դստերս։ * Եւ եղեն ամ աւուրք
ենոքայ՝ ամք երեք հարիւր վաթսուն
24 եւ հինգ։ * Եւ հաճոյ եղեւ ենոք Այ.
եւ ոչ ուրեք գտանիւր, զի փոխեաց
25 զնա Ած։ * Եւ եկեաց մաթուսաղա
ամս հարիւր ութսուն եւ եօթն. եւ
26 ծնաւ զղամէք։ * Եւ եկեաց մաթու-
սաղա յետ ծնանելոյ նորա զղամէք՝
ամս եօթնհարիւր ութսուն եւ եր-
կուս. եւ ծնաւ ուստերս եւ դստերս։
27 * Եւ եղեն ամ աւուրք մաթուսա-
ղայի զորս եկեաց՝ ամք իննհարիւր
28 վաթսուն եւ ինն. եւ մեռաւ։ * Եւ
եկեաց ղամէք ամս հարիւր ութսուն
29 եւ ութ. եւ ծնաւ որդի։ * Եւ անուա-
նեաց զանուն նր նոյ. ասէ՝ սա հան-
գուսցէ զմեզ ՚ի գործոց մերոց, եւ ՚ի
տրտմութենէ ձեռաց մերոց. եւ յերկրէ
30 զոր անէծ Տր Ած։ * Եւ եկեաց ղա-
մէք յետ ծնանելոյ նորա զնոյ՝ ամս
հինգհարիւր վաթսուն եւ հինգ. եւ
31 ծնաւ ուստերս եւ դստերս։ * Եւ
եղեն ամ աւուրք ղամէքայ՝ ամք եօթն
հարիւր յիսուն եւ երեք. եւ մեռաւ։
32 * Եւ էր նոյ ամաց հինգ հարիւրոց
եւ

‖ Սիրաք. 44.15. Եբր. 11.5.

և ծնաւ Նոյ երիս որդիս . զՍէմ . զՔամ . զՅաբեթ :

## Գլ. Զ.

1 Եւ եղև իբրև սկսան մարդիկն բազմանալ 'ի վերայ երկրի . և դստերք ծնան նց : 2 * Տեսեալ որդւոցն Այ զդստերսն մարդկան, զի գեղեցիկք էին՝ առին իւրեանց կանայս յամենեցունց զորս ընտրեցին : 3 * Եւ ասէ Տէր Ած . մի՛ մնասցէ ոգի իմ 'ի մարդկանդ յայդմիկ յաւիտեան . վն լինելոյ դոցա մարմին : և եղիցին աւուրք դոցա՝ ամք հարիւր և քսան : 4 * Հսկայք էին 'ի վր երկրի յաւուրսն յայնոսիկ : և յետ այնորիկ իբրև մտանէին որդիքն Այ առ դստերսն մարդկան . և ծնանէին իւրեանց որդիս . նոքա էին սկայքն, որք յաւիտենից արք անուանիք : 5 * Եւ իբրև ետես Տր Ած, եթէ բազմացան չարիք մարդկան 'ի վերայ երկրի . և ‖ ամ ոք խորհէր 'ի սրտի իւրում խնամով 'ի չարիս զամ աւուրս : 6 * Եւ սրտմտեցաւ Ած զի արար զմարդ 'ի վերայ երկրի . և մտախորհ եղև 'ի սրտի իւրում : 7 * Եւ ասէ Տր Ած . ջնջեցից զմարդն զոր արարի յերեսաց երկրի . 'ի մարդոյ մինչև յանասուն . և 'ի սողնոց մինչև 'ի թռչունս երկնից . զի բարկացայ զի արարի զնս : 8 * Բայց Նոյ եգիտ շնորհս առաջի Տն Այ : 9 * Եւ այս են ծնունդք Նոյի . ‖ Նոյ այր արդար կատարեալ էր յազգի անդ իւրում . և հաճոյ եղև Նոյ Այ : 10 * Եւ ծնաւ Նոյ երիս որդիս . զՍէմ . զՔամ . զՅաբեթ : 11 * Եւ ապականեցաւ երկիր առաջի Այ . և լցաւ երկիր անիրաւութեամբ : 12 * Եւ ետես Տր Ած զերկիր, և էր ապականեալ : զի ապականեաց ամ մարմին զճանապարհ իւր 'ի վր երկրի : 13 * Եւ ասէ Տր Ած ցՆոյ . ժամանակ ամ մարդոյ հասեալ է առաջի իմ : զի լցաւ երկիր անիրաւութեամբ 'ի նոցանէ : և ահա ես ապականեցից զնս և զերկիր : 14 * Արդ՝ արա՛ դու քեզ տապան 'ի չորեքկուսի փայտից : խորշս խորշս գործեսցես զտապանն . և նաւթիւ ծեփեսցես զնա ներքոյ և արտաքոյ : 15 * Եւ այսպէս արասցես զտապանն : յերեքհարիւր կանգնոյ զերկայնութիւն տապանին . և 'ի յիսուն կանգնոյ զլայնութիւն . և յերեսուն կանգնոյ զբարձրութիւն : 16 * Ժողովելով գործեսցես զտապանն . և 'ի մի կանգուն կատարեսցես զնա 'ի վերուստ . զդուռն տապանին 'ի կողմանէ արասցես . ներքնատունս . և միջնատունս . և վերնատունս գործեսցես 'ի նմա : 17 * Եւ ես ահա ածից զջրհեղեղ ջրոյ 'ի վերայ երկրի . ապականել զամ մարմին . յորում է շունչ կենդանի 'ի ներքոյ երկնից . և ինչ որ իցէ 'ի վր երկրի սատակեսցի : 18 * Եւ եդից զուխտ իմ ընդ քեզ . և մտցես 'ի տապանն . դու և որդիք քո . և կին քո, և կանայք որդւոց քոց ընդ քեզ : 19 * Եւ յամ անասնոց . և յամ գազանաց . և յամ մարմնոց . երկուս երկուս յամէ մուծցես 'ի տապանն բուծանել ընդ քեզ . արու և էգ լինիցին : 20 * Յամ հաւուց թռչնոց ըստ ազգի . և յամ անասնոց ըստ ազգի . և յամ սողնոց երկրի ըստ ազգի իւրեանց . երկու երկու յամենայնէ մտանիցեն առ քեզ . զի կեցցեն : 21 * Եւ դու առնուցուս քեզ յամ կերակրոց զոր ուտիցէք . և ժողովեսցես դու առ քեզ . 22 և եղիցի քեզ և նց կերակուր : * Եւ արար Նոյ զամ, զոր միանգամ պատուիրեաց նմա Տր Ած . նոյնպէս և արար :

[illegible]
‖ [illegible] 8.21.
Մատ. 15.19.
[illegible]
‖ Սիրաք 44.17.

## Գլ. Է.

1 Եւ ասէ Ած ցՆոյ : մուտ դու և ամ տունս քո 'ի տապանդ : ‖ զի զքեզ տեսի արդար առաջի իմ յազգիդ յայդմիկ : 2 * Եւ յամ անասնոց սրբոց մուծ ընդ քեզ եօթն եօթն արու և էգ : և յամ անասնոց որք ոչ են սուրբ, երկուս երկուս . արու և էգ : 3 Եւ 'ի թռչնոց երկնից 'սրբոց՝ եօթն եօթն արու և էգ : և 'ի թռչնոց որք ոչ սուրբ են՝ երկուս երկուս արու և էգ . բուծանել զաւակ 'ի վերայ ամ երկրի : 4 * Եւ այլևս եօթն օր . և ածից ես անձրև 'ի վր երկրի զքառասուն տիւ և զքառասուն գիշեր : և ջնջեցից զամ հասակ, զոր արարի՝ յերեսաց երկրի : 5 * Եւ արար Նոյ զամ, զոր միանգամ 6 պատուիրեաց նմա Տր Ած : * Եւ Նոյ էր ամաց վեց հարիւրոց : և ջրհեղեղ ջուրցն եղև 'ի վերայ երկրի : 7 * ‖ Եւ եմուտ Նոյ և որդիք իւր : և կին նորա . և կանայք որդւոց նորա ընդ նմա 'ի տապանն, վասն ջուրցն հեղեղի : 8 * Եւ յամ անասնոց սրբոց . և յանասնոց որք ոչ սուրբ էին . և 'ի թռչնոց սրբոց . և 'ի թռչնոց, որք ոչ սուրբ էին . և յամ սողնոց՝ որք սողին 'ի վերայ երկրի : 9 * Երկու երկու մտին առ Նոյ 'ի տապանն անդր . արու և էգ . որպէս պատուիրեաց նմա Ած : 10 * Եւ եղև յետ եօթն աւուր և ջուր ջրհեղեղին եղև 'ի վր 11 երկրի : * Յամին վեցհարիւրորդի կենաց Նոյի . յերկրորդում ամսեանն 'ի քսան և եօթն ամսոյն : և պատառեցան ամ աղբիւրք անդնդոց բազմաց . 12 և սահանք երկնից բացան : * Եւ եղև անձրև.

‖ Եբր. 11.7.
2. Պետ. 2.5.
‖ Մատ. 24.37.
Ղուկ. 17.26.
1. Պետ. 3.20.

անձրեւ 'ի վերայ երկրի զքառասուն տիւ, եւ զքառասուն գիշեր ։



13 *Յաւուր յայնմիկ եմուտ Նոյ ․ Սէմ ․ Քամ ․ Յաբեթ ․ որդիք Նոյի ։ եւ կին Նոյի ․ եւ երեք կանայք որդւոց նորա ընդ նմա 'ի տապանն անդր ։ 14 *Նոքա եւ ամենայն գազանք ըստ ազգի ․ եւ ամ՟ անասուն ըստ ազգի իւրեանց ․ եւ ամ՟ սողուն շարժուն 'ի վերայ երկրի ըստ ազգի իւրեանց ․ եւ ամենայն հաւ թռչուն ըստ ազգի իւրում ։ 15 *Մտին առ Նոյ 'ի տապանն անդր երկու երկու յամ՟ մարմնոյ, յորում էր շունչ կենդանի ։ 16 *Եւ որք մտանէին՝ արու եւ էգ յամ՟ մարմնոյ մտանէին ․ որպէս պատուիրեաց Ա՟ծ Նոյի ։ 17 *Եւ փակեաց Տ՟ր Ա՟ծ արտաքոյ նորա զտապանն ։ եւ եղեւ ջրհեղեղ զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր 'ի վերայ երկրի ։ եւ բազմացաւ ջուրն եւ վերացոյց զտապանն ․ եւ բարձրացաւ յերկրէ ։ 18 *Եւ զօրանայր ջուրն եւ բազմանայր յոյժ 'ի վերայ երկրի ։ եւ շրջէր տապանն 'ի վ՟ր ջրոց ։ 19 *Եւ սաստկանայր ջուրն յոյժ յոյժ 'ի վերայ երկրի ։ եւ ծածկէր զամ՟ լերինս բարձունս որք էին 'ի ներքոյ երկնից ։ 20 *Հնգետասան կանգուն բարձրացաւ ջուրն 'ի վեր ․ եւ ծածկեաց զամ՟ լերինս ։ 21 *Եւ մեռաւ ամ՟ մարմին շարժուն 'ի վերայ երկրի ․ թռչնոց, եւ անասնոց՝ եւ գազանաց, եւ ամ՟ սողուն զեռուն 'ի վերայ երկրի ,

Իմաս. 10. 4.
Մատթ. 39·28.
1. Պետ. 3·20.

22 եւ ամ՟ մարդ ։ *Եւ ամ՟ որ ունէր շունչ կենդանի յունգունս իւր ․ եւ ամ՟ որ ինչ էր 'ի վերայ ցամաքի մեռաւ ։ 23 *Եւ ջնջեաց զամ՟ հաստակ որ էր 'ի վ՟ր երեսաց երկրի ․ 'ի մարդոյ մինչեւ յանասուն եւ 'ի սողնոց մինչեւ 'ի թռչունս երկնից ․ եւ ջնջեցան յերկրէ ։ եւ մնաց միայն Նոյ, եւ որք ընդ նմա էին 'ի տապանի անդ ։ 24 *Եւ բարձրացաւ ջուրն 'ի վերայ երկրի աւուրս հարիւր եւ յիսուն ։

## ԳԼ ։ Ը ։

1 Եւ յիշեաց Ա՟ծ զՆոյ, եւ զամ՟ գազանս, եւ զամ՟ անասունս ․ եւ զամ՟ թռչունս ․ որք էին ընդ նմա 'ի տապանի անդ ․ եւ էած Ա՟ծ հողմ 'ի վ՟ր երկրի, եւ դադարեաց ջուրն ։ 2 *Եւ խցան աղբիւրք անդնդոց ․ եւ սահանք երկնից ․ եւ արգելաւ անձրեւ յերկնից ։ 3 *Եւ զիջանէր տակաւ երթայր ջուրն եւ թողանայր յերկրէ ․ եւ նուազէր ջուրն յետ հարիւր եւ յիսուն աւուր ։ 4 Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեանն 'ի քսանեւեօթն ամսոյն 'ի լերինս Արարադայ ։ 5 *Եւ ջուրն երթայր եւ նուազէր մինչեւ 'ի տասներորդ ամիսն ։ իսկ յամսեանն մետասաներորդի, որ օր առաջին էր ամսոյն, երեւեցան գլուխք լերանց ։ 6 *Եւ եղեւ յետ քառասուն աւուր՝ եբաց Նոյ զպատուհան տապանին զոր արար ։ 7 *Եւ արձակեաց զագռաւն ․ եւ ել եւ անդրէն ոչ դարձաւ մինչեւ ցցամաքիլ ջրոյն յերկրէ ։ 8 *Եւ արձակեաց զաղաւնին զհետ նր՟ տեսանել թէ ցածուցեալ իցէ ջուրն յերեսաց երկրի ։ 9 *Եւ չգտեալ աղաւնւոյն հանգիստ ոտից իւրոց, դարձաւ անդրէն առ նա 'ի տապանն անդր ․ զի ջուր դեռ ունէր զամ՟ երեսս երկրի ։ եւ ձգեաց զձեռն եւ ընկալաւ զնա ․ եւ էառ զնա անդրէն առ իւր 'ի տապանն անդր ։ 10 *Եւ դադարեաց եւս աւուրս եօթն ․ եւ դարձեալ արձակեաց զաղաւնին 'ի տապանէ անտի ։ 11 *Եւ դարձաւ առ նա աղաւնին ընդ երեկս ․ եւ ունէր տերեւ ձիթենւոյ շիւղ 'ի բերանի իւրում ․ եւ գիտաց Նոյ, թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ ։ 12 *Եւ դադարեաց աւուրս եօթն եւս ․ եւ դարձեալ արձակեաց զաղաւնին ։ եւ ոչ եւս յաւել դառնալ առ նա ։ 13 *Եւ եղեւ 'ի վեց հարիւրորդի եւ 'ի միում ամի կենացն Նոյի, յամսեանն առաջնում, որ օր մի էր ամսոյն, նուազեաց ջուրն յերեսաց երկրի ։ եւ եբաց Նոյ զձեղուն [ծածկո]յթ տապանին զոր արար ։ Եւ ետես զի նուազեալ

զեալ էր ջուրն՝ յերեսաց երկրի ։ * Եւ 'ի 14
յամսեանն երկրորդի, որ օր քսան և
եօթն էր ամսոյն՝ ցամաքեցաւ երկիր ։
* Եւ խօսեցաւ Տր Ա.Ծ ընդ Նոյի, և 15
ասէ ։ * Ել 'ի տապանէ այտի, դու և 16
կին քո ։ և որդիք քո ․ և կանայք որդ-
ւոց քոց ընդ քեզ ։ * Եւ ամ գազանք 17
որք են ընդ քեզ ․ և ամ մարմին ․ 'ի
թռչնոց մինչև ցանասունս ։ և զամ սո
ղուն զեռուն երկրի հան ընդ քեզ ․ և
‖ Ծնն. զեռասցեն 'ի վերայ երկրի ։ ‖ Եւ աճե
1.28. ցէք և բազմացարուք 'ի վր երկրի ։
Ծնն. * Եւ ել Նոյ, և կին նորա, և կանայք 18
9.1. որդւոց նր ընդ նմա ։ * Եւ ամ գա- 19
զան, և ամ սողուն շարժուն, և ամե-
նայն թռչուն յերկրէ ըստ ազգի իւր
եանց, ելին 'ի տապանէ անտի ։



* Եւ շինեաց Նոյ սեղան Տն ։ և էառ 20
յամ անասնոց սրբոց ․ և յամ թռչնոց
սրբոց ․ և եհան ողջակէզ 'ի վերայ սե-
ղանոյն ։ * Եւ հոտոտեցաւ Տր Ա.Ծ 'ի 21
հոտ անուշից ։ և ասէ Տր Ա.Ծ, ածեալ
զմտաւ, ոչ ևս յաւելից անիծանել
‖ Ծնն. զերկիր վասն գործոց մարդկան ։
6.5. ‖ զի միտք մարդոյ հաստատեալ են 'ի
Մատ. խնամս չարի 'ի մանկութէ իւրմէ ։
15.19. արդ ոչ ևս յաւելից հարկանել զամ
մարմին կենդանի որպէս արարի ։
* Ա.յաւիտեան զամ աւուրս երկրի՝ 22
սերմն և հունձք, ցուրտ և տօթ, ա-
մառն և գարուն, զտիւ և զգիշեր մի
դադարեսցեն ։

## Գլ ։ Թ ․

1 Եւ օրհնեաց Ա.Ծ զՆոյ և զորդիս
նորա ։ և ասէ ցնս ‖ աճեցէք՝ և ‖ Ծնն.
բազմացարուք և լցէք զերկիր և տի- 1.22. և
2 րեցէք դմա ։ * Եւ ահ և երկիւղ ձեր 8.17.
եղիցի 'ի վր ամ գազանաց երկրի ․ և
'ի վր ամ թռչնոց երկնից ․ և 'ի վերայ
ամ զեռնոց երկրի ․ և 'ի վր ամ ձկանց
ծովու ․ զորս ընդ ձեռամբ ձերով
3 եմու ։ * ‖ Եւ ամ զեռուն որ է կենդա ‖ Ծնն.
նի, ձեզ լիցի 'ի կերակուր իբրև զբան 1.29.
4 ջար խոտոյ տուի ձեզ զամ ։ * Բայց Ղևտ.
զմիս արեամբ շնչոյ մի ուտիցէք ։ 17.14.
5 * Զանզի և զձեր արիւն շնչոյ խնդ-
րեցից ․ 'ի ձեռաց ամ գազանաց խնդ-
րեցից զնա ․ և 'ի ձեռաց մարդոյ ․ 'ի ձե-
ռաց առն զշունչ եղբօր իւրոյ խնդրե
6 ցից ։ * ‖ Որ հեղու զարիւն մարդոյ՝ ‖ Մատ.
փոխանակ արեան նորա հեղցի արիւն 26.52.
նորա ։ զի 'ի պատկեր Ա.Ծ արարի ես Յայտ.
7 զմարդն ։ * ‖ Այլ դուք աճեցէք՝ և 13.10.
բազմացարուք՝ և լցէք զերկիր ․ և բազ ‖ Ծնն.
8 մացարուք 'ի վր դորա ։ * Եւ խօսեցաւ 1.28. և
Տր աստուած ընդ Նոյի ․ և ընդ որդիս 8.17.
9 նորա որք ընդ նմա էին՝ և ասէ ․ * Եւ
ահաւասիկ ես հաստատեմ զուխտ իմ
ընդ ձեզ և ընդ զաւակի ձերում յետ
10 ձեր ։ * Եւ ընդ ամ շնչոյ կենդանւոյ
որք ընդ ձեզ են ․ 'ի թռչնոց և յանաս-
նոց և յամ գազանաց երկրի որք ընդ
ձեզ ․ և յամենեցունց որք ելին 'ի տա-
պանէ անտի ․ և ամ անասնոց երկրի ։
11 * ‖ Եւ հաստատեցից զուխտ իմ ընդ ‖ Եսա.
ձեզ ․ և ոչ ևս մեռցի ամ մարմին 'ի ջր 54.9.
հեղեղէ ․ և ոչ ևս եղիցի ջրհեղեղ
12 ջուրց ապականել զամ երկիր ։ * Եւ
ասէ Տր Ա.Ծ ցՆոյ և ցորդիս նր ․ այս է
նշան ուխտին ․ զոր ես տաց ընդ իս և
ընդ ձեզ ․ և 'ի մէջ ամ շնչոյ կենդանւոյ
որ է ընդ ձեզ ․ յազգս յաւիտենից ։
13 Զաղեղն իմ եդից յամպս, և եղիցի
'ի նշանակ յաւիտենական ուխտին ըն
14 դ իս և ընդ ամ երկիր ։ * ‖ Եւ եղիցի ‖ Սիրաք.
'ի գումարել ինձ զամպս 'ի վր երկրի, 43.12.
15 երևեսցի աղեղն իմ յամպս ։ * Եւ յի-
շեցից զուխտ իմ որ ընդ իս և ընդ ձեզ ․
և 'ի մէջ ամ շնչոյ կենդանւոյ յամե-
նայն մարմնի ․ և ոչ ևս եղիցի ջրհեղեղ
16 'ի սատակել զամ մարմին ։ * Եւ եղիցի
աղեղն յամպս ․ և տեսից յիշել զուխտն
յաւիտենական ․ 'ի մէջ իմ և 'ի մէջ
ամ շնչոյ կենդանւոյ ․ յամ մարմնի որ
17 է 'ի վր երկրի ։ * Եւ ասէ Ած ցՆոյ ․
այս է նշան ուխտին ․ զոր ուխտեցի ես
ընդ իս և ընդ ձեզ ․ և 'ի մէջ ամ մարմ-
18 նոյ որ է 'ի վր երկրի ։ * Եւ էին որդիքն
Նոյի որք ելին 'ի տապանէ անտի ․ սեմ ․
քամ ․

քամ. յաբեթ: քամ էր հայր քանանու: * Երեք սոքա էին որդիք Նոյի: և 'ի սոցանէ սփռեցան ընդ ամ երկիր: * Եւ սկսաւ Նոյ այր հողագործ՝ գեր_կիր գործել: և տնկեաց այգի: * Եւ եարբ 'ի գինւոյն՝ և արբեցաւ. և մեր_կացաւ 'ի տան իւրում: * Եւ ետես քամ հայր քանանու զմերկութի հօր իւրոյ. և ել պատմեաց երկուց եղբարց իւրոց արտաքոյ: * Եւ առեալ սեմայ, և յաբեթի հանդերձ, եդին 'ի վ(երայ) թի_կանց երկոցունց. և գնացին յետս յետս. և ծածկեցին զմերկութի հօրն իւր_եանց. և զերեսս իւրեանց յետս ընդ_դէմ ունէին. և զմերկութի հօրն իւր_եանց ոչ տեսին: * Եւ սթափեցաւ Նոյ 'ի գինւոյ անտի իւրմէ: և գիտաց զինչ արար ընդ նա որդին իւր կրտսեր:
* Եւ ասէ. անիծեալ քանան մանուկ. և եղիցի ծառայ եղբարց իւրոց: * Եւ ասէ օրհնեալ Տր Ա̃Ծ. Ա̃Ծ սեմայ. և եղիցի քանան ծառայ նորա: * Ընդ_արձակեսցէ Ա̃Ծ յաբեթի. և բնա_կեսցէ 'ի տան սեմայ. և եղիցի քանան ծառայ նը: * Եւ եկեաց Նոյ յետ ջր_հեղեղին՝ ամս երեքհարիւր և յիսուն: * Եւ եղեն ամ աւուրք Նոյի, ամք ինն հարիւր և յիսուն. և մեռաւ:

## Գլ: Ժ:

Եւ այս են ծնունդք որդւոցն Նոյի. սեմ. քամ. յաբեթ. և ծնան նը որդիք յետ ջրհեղեղին: * Որդիք յա_բեթի. գամեր. և մագոգ. և մադայ՝ և յաւան. և եղիսայ. և թոբէլ. և մոսոք. և թիրաս: * Եւ որդիք գամերայ՝ աս_քանազ. և րիփաթ. և թորգոմա: * Եւ որդիք յաւանայ, եղիսայ. և թարսիս. կիտիացիք. և ռոդացիք: * Եւ 'ի սոցանէ մեկնեցան կղզիք ազգաց յերկրի իւրեանց. իւրաքանչ_իւր ըստ լեզուս յազգս իւրեանց. և 'ի տոհմս իւրեանց: * Եւ որդիք քա_մայ. քուշ. և մեսրեմ. փուդ. և քա_նան: * Եւ որդիք քուշայ. սաբայ. և եւիլայ. և սաբաթայ. և ռեգմայ. և սաբակաթայ: և որդիք ռեգմայ, սաբայ և յուդադան: * Եւ քուշ ծնաւ զնեբրովթ. նա սկսաւ լինիլ սկայ 'ի վերայ երկրի: * Եւ նա էր սկայ որ_սորդ առաջի Տն Ա̃Յ: վասն այնորիկ ասեն. իբրև զնեբրովթ սկայ առաջի Տն Ա̃Յ: * Եւ եղև սկիզբն թագաւո_րութե նորա բաբելոն. և արեդ. և աքադ. և քաղանէ. յերկրին սենաար: * Յերկրէ յայնմանէ ել ասուր և շի_նեաց զնինուէ. և զռոբովթ քաղաք. և զքաղան: * Եւ զդասեմսն. 'ի մէջ նի_նուէի. և 'ի մէջ քաղանայ. այն է քա_ղաք մեծ: * Եւ մեսրեմ ծնաւ զլու_դիիմացիս. և զենեմիմացիս. և զլաա_բիիմացիս. և զնեփթաղիիմացիս: * Եւ զպատրոսոնիիմացիս. և զքասղոմիի_մացիս. ուստի ելին փղշտացիք. և զկափ_թորիմացիս: * Եւ քանան ծնաւ զսի_դոն զանդրանիկ իւր. և զքետացին: * Եւ զյեբուսացին. և զամորհացին. և զգերգեսացին: * Եւ զխեւացին. և զարուկացին. և զասենացին: * Եւ զարադիոնացին. և զսամարացին. և զամաթացին: և յետ այնորիկ սփռե_ցան ազգք քանանացւոց: * Եւ եղեն սահմանք քանանացւոց. 'ի սիդոնէ մինչև 'ի գալ 'ի գերարայ և 'ի գազայ. մինչև 'ի գալ 'ի սոդոմ և 'ի գոմոր. և յադամայ. և 'ի սեբոյիմ. մինչև 'ի ղա_սայ: * Սոքա են որդիք քամայ յազգս իւրեանց. ըստ լեզուս իւրեանց. յաշ_խարհս իւրեանց. և 'ի տոհմս իւրեանց:
* Եւ սեմայ ծնան որդիք. և նա է հայր ամ որդւոցն եբերայ: եղբօրն յաբեթի երիցու: * Որդիք սեմայ. Ելամ. և ասուր. արփաքսադ. և ղուդ. և արամ: * Եւ որդիք արամայ. հուս. և եմուղ. և գաթեր. և մոսոք: * Եւ արփաքսադ ծնաւ զսաղայ. և սաղայ ծնաւ զեբեր: * Եւ եբերայ ծնան երկու որդիք. անուն միոյն փաղէկ. զի յաւուրս նորա բաժանեցաւ եր_կիր: և անուն եղբօր նը յեկտան: * Եւ յեկտան ծնաւ զեղմոդադ. և զսաղեփ. և զասարմոթ. և զյարաք: * Եւ զոդորամ. և զեզել. և զդեկղայ: * Եւ զգեբաղ. և զաբիմեէլ. և զսա_բեէի: * Եւ զուփիր. և զեւիլայ, և զյոբաբ: ամենեքին սոքա որդիք յեկ_տանայ: * Եւ եղև բնակութի նոցա 'ի մասեայ մինչև 'ի գալ 'ի սոփերայ, լեառնն արևելեայց: * Սոքա են որդիք սեմայ յազգս իւրեանց. ըստ լեզուս իւրեանց. յաշխարհս իւրեանց և 'ի տոհմս իւրեանց: * Այս են ազգք որդւոց Նոյի. ըստ ծննդս իւրեանց ըստ տոհմս իւրեանց: և 'ի սոցանէ սփռեցան կղզիք ազգաց 'ի վերայ երկրի. յետ ջրհեղեղին:

## Գլ: ԺԱ:

Եւ էր ամ երկիր լեզու մի և բար_բառ մի ամենեցուն: * Եւ եղև 'ի խաղալն նը յարևելից, գտին դաշտ մի յերկրին սենաար. և բնակեցան անդ: * Եւ ասեն այր ցընկեր իւր. ե_կայք արկցուք աղիւս. և թրծեսցուք զայն հրով: և եղև նը աղիւսն 'ի տեղի քարի. և կուպր 'ի տեղի շաղախոյ:

1. Մնաց. 1.5.
1. Մնաց. 1.17.
Իմաս. 10.5.
Միքէ.



*Եւ ասեն եկա՛յք շինեսցուք մեզ քաղաք եւ աշտարակ․ որոյ լինիցի գլուխ մինչեւ յերկինս․ եւ արասցուք մեզ անուն յառաջ քան զցրուիլ՚ի վերայ երեսաց ամ երկրի։ 4 *Եւ էջ Տր տեսանել զքաղաքն եւ զաշտարակն․ զոր շինեցին որդիք մարդկան։ 5 *Եւ ասէ Տր․ ահա ազգ մի․ եւ լեզու մի ամենեցուն․ եւ զայդ սկսան գործել։ եւ ոչինչ պակասի՚ի նոցանէ, զամ զոր ինչ յօժարեսցին գործել։ 6 *Եկա՛յք իջցուք եւ խառնակեսցուք անդ զլեզուս նց․ զի մի լուիցեն իւրաքանչիւր բարբառոյ ընկերի իւրոյ։ 7 *Եւ սփռեաց զնոսա Տր Ած անտի ընդ երեսս ամ երկրի․ եւ դադարեցին՚ի շինելոյ զքաղաքն եւ զաշտարակն։ 8 *Վասն այնորիկ կոչեցաւ անուն նր խառնակութի։ զի անդ խառնակեաց Տր Ած զլեզուս ամ երկրի․ եւ անտի ցրուեաց զնս Տր Ած ընդ երեսս ամ երկրի։ 9

‖Ա․Մնաց 1.17.

*Եւ այս են ծնունդք Սեմայ։ ‖Սեմ որդի հարիւրամենէր՝ յորժամ ծնաւ զարփաքսադ․ յերկրորդում ամի յետ ջրհեղեղին։ 10 *Եւ եկեաց Սեմ յետ ծնանելոյ նր զարփաքսադ՝ ամս հինգ հարիւր․ եւ ծնաւ ուստերս եւ դստերս, եւ մեռաւ։ 11 *Եւ արփաքսադ եկեաց ամս հարիւր եւ երեսուն եւ հինգ, եւ ծնաւ զսաղայ։ 12 *Եւ եկեաց արփաքսադ յետ ծնանելոյ նր զսաղայ, ամս երեքհարիւր եւ երեսուն․ եւ ծնաւ ուս- 13

14 տերս եւ դստերս․ եւ մեռաւ։ *Եւ եկեաց սաղա ամս հարիւր եւ երեսուն, եւ ծնաւ զեբեր։ 15 *Եւ եկեաց սաղա յետ ծնանելոյ նորա զեբեր, ամս երեքհարիւր եւ երեսուն․ եւ ծնաւ ուստերս եւ դստերս եւ մեռաւ։ 16 *Եւ ‖եկեաց եբեր ամս հարիւր եւ երեսուն եւ չորս, եւ ծնաւ զփաղեկ։ 17 *Եւ եկեաց եբեր յետ ծնանելոյ նր զփաղեկ, ամս երկերիւր եւ եօթանասուն․ եւ ծնաւ ուստերս եւ դստերս եւ մեռաւ։ 18 *Եւ եկեաց փաղեկ ամս հարիւր եւ երեսուն եւ չորս, եւ ծնաւ զռագաւ։ 19 *Եւ եկեաց փաղեկ յետ ծնանելոյ նորա զռագաւ՝ ամս երկերիւր եւ ինն․ եւ ծնաւ ուստերս եւ դստերս, եւ մեռաւ։ 20 *Եւ եկեաց ռագաւ ամս հարիւր եւ երեսուն եւ երկուս․ եւ ծնաւ զսերուք։ 21 *Եւ եկեաց ռագաւ յետ ծնանելոյ նր զսերուք՝ ամս երկերիւր եւ եօթն․ եւ ծնաւ ուստերս եւ դստերս, 22 եւ մեռաւ։ *Եւ եկեաց սերուք ամս հարիւր եւ երեսուն եւ ծնաւ զնաքոր։ 23 *Եւ եկեաց սերուք յետ ծնանելոյ նր զնաքոր՝ ամս երկերիւր․ եւ ծնաւ 24 ուստերս եւ դստերս, եւ մեռաւ։ *Եւ եկեաց նաքովր՝ ամս եօթանասուն եւ 25 ինն, եւ ծնաւ զթարայ։ *Եւ եկեաց նաքոր յետ ծնանելոյ նր զթարայ՝ ամս հարիւր քսան եւ երկուս․ եւ ծնաւ ուս- 26 տերս եւ դստերս, եւ մեռաւ։ *Եւ եկեաց թարայ ամս ‖եօթանասուն․ եւ ծնաւ զաբրամ, եւ զնաքոր, եւ զառան։ 27 *Այս են ծնունդք թարայի։ թարայ ծնաւ զաբրամ, եւ զնաքոր, եւ զառան։ 28 եւ առան ծնաւ զղօտ։ *Եւ մեռաւ առան առաջի թարայի հօր իւրոյ․ յերկրին յորում ծնաւ, յաշխարհին 29 քաղդեացւոց։ *Եւ առին աբրամ եւ նաքոր իւրեանց կանայս։ եւ անուն կնոջն աբրամու սարայ։ եւ անուն կնոջն նաքորայ մեղքայ․ դուստր առանայ․ հօր մեղքայ․ եւ հօր յեսքայ։ 30 *Եւ էր սարայ ամուլ եւ ոչ ծնանէր։ 31 *Եւ ‖էառ թարայ զաբրամ զորդի իւր, եւ զնաքոր զորդի իւր․ եւ զղօտ զորդի առանայ որդւոյ իւրոյ։ եւ զսարայ զնու իւր, զկին աբրամու որդւոյ իւրոյ, եւ էհան զնս յաշխարհէն քաղդեացւոց, երթալ յերկիրն քանանացւոց։ եւ եկին մինչեւ ցխառան, եւ բնակեցան անդ։ 32 *Եւ եղեն ամ աւուրք թարայի՚ի խառան, ամք երկերիւր եւ հինգ․ եւ մեռաւ թարայ՚ի խառան։

‖Ա․Մնաց 1.19. ‖Յեսու 24.2. Ա․Մնաց 1.28. ‖Յեսու 24.2. Նեեմ 9.7. Յուդթ 5.8. Գործ 7.2.

## ԳԼ․ ԺԲ․

1 Եւ ասէ Տր Ած ցաբրամ։ Ել դու յերկրէ քումմէ․ եւ յազգէ քումմէ․ եւ

Գործ 7.3.

և 'ի տանէ հօր քոյ, և եկ յերկիր զոր
ցուցից քեզ: *Եւ արարից զքեզ յազգ
մեծ. և օրհնեցից զքեզ. և մեծացու-
ցից զանուն քո. և եղիցիս օրհնեալ:
*Եւ օրհնեցից զօրհնիչս քո, և զանի- 3
ծիչս քո անիծից. և օրհնեսցին 'ի քեզ
ամ ազգ երկրի: *Եւ գնաց աբրամ 4
որպէս խօսեցաւ ընդ նմա Տր. եր-
թայր ընդ նմա և ղովտ: և աբրամ
էր ամաց եօթանասուն և հնգից,
յորժամ ել 'ի խառանէ: *Եւ էառ 5
աբրամ զսարայ զկին իւր. և զղովտ
զեղբօրորդի իւր. և զամ զինչս իւր-
եանց զորս ստացան. և զամ ոգիս
զորս ստացան 'ի խառանու. ելին գնալ
յերկիրն քանանացւոց. և եկին յեր-
կիրն քանանու: *Եւ շրջեցաւ աբ- 6
րամ յերկիրն ընդ երկայնութի նր
մինչև 'ի տեղին 'ի սիւքեմ, 'ի կաղնին
բարձր: բայց քանանացիք բնակեալ
էին յայնժամ յերկրին: *Եւ երևե- 7
ցաւ Տր աբրամու. և ասէ ցնա. զաւ-
ակի քում տաց զերկիրս զայս. և շի-
նեաց անդ աբրամ սեղան Տն. որ երև-
եցաւ նմա. *Եւ մեկնեցաւ անտի 'ի 8
լեառնն ընդ արևելս 'ի բեթէլ. և
եհար անդ զխորան իւր 'ի բեթէլ յան-
դիման ծովուն՝ անգէի ընդ արևելս:
և շինեաց անդ սեղան Տն. և կոչեաց
յանուն Տն: *Չուեաց աբրամ. և 9
գնաց բնակեցաւ յանապատի: *Եւ 10
եղև սով յերկրին. և էջ աբրամ յե-
գիպտոս բնակել անդ պանդխտու-
թեամբ. զի զօրացաւ սով յերկրին:
*Եւ եղև իբրև մերձեցաւ աբրամ 11
մտանել յեգիպտոս. և ասէ ցսարայ
ցկին իւր: գիտեմ զի կին գեղեցիկ ես
դու: *Արդ եղիցի եթէ տեսանի- 12
ցեն եգիպտացիքն, և ասիցեն թէ
կին նորա է սա. և սպանանիցեն զիս
և զքեզ ապրեցուցանիցեն: *Ասա- 13
ցես թէ քոյր նորա եմ. զի բարի լիցի
ինձ վասն քո. և կեցցէ անձն իմ յա-
ղագս քո: *Եւ եղև իբրև եմուտ 14
աբրամ յեգիպտոս. և տեսեալ եգիպ-
տացւոցն զկինն զի գեղեցիկ էր յոյժ:
*Տեսին զնա և իշխանքն փարաւոնի. 15
և գովեցին զնա առաջի փարաւոնի.
և տարան զնա 'ի տուն փարաւոնի:
*Եւ աբրամու բարիս առնէին վասն 16
նր: և եղեն նր խաշինք. անդեայք.
և էշք. ծառայք. և աղախնայք.
ջորիք. և ուղտք: *Եւ պատժեաց 17
Տր զփարաւոն պատժօք մեծամե-
ծօք. և չարեօք. և զտուն նորա. վն
սարայի կնոջն աբրամու: *Կոչեաց 18
փարաւոն զաբրամ. և ասէ ցնա: զի՞նչ
գործեցեր զայդ ընդ իս. զի ոչ պատ-

Գաղա. 3.8. Ս այր. 18. 18. և 22.17 և 26.4. Եբրայ. 11.8. Ս այր. 13. 15. և 15.18 և 26.3. 2. Օրէ. 34.4. Ս այր. 20.12.

19 մեցեր ինձ եթէ կին քո է: *Ընդէր
ասացեր եթէ քոյր իմ է. և առի զդա
ինձ կնութե: և արդ ահաւասիկ կին
քո առաջի քո. առ և գնա 'ի բաց:
20 *Եւ պատուէր ետ արանց վն աբրա-
մու. յուղարկել զնա և զկին նորա.
և զամ զոր ինչ էր նորա. և զղովտ
ընդ նմա:

## ԳԼ: ԺԳ:

1 Ել աբրամ յեգիպտոսէ ինքն
և կին իւր. և ամ որ ինչ էր նր:
2 և ղովտ ընդ նմա յանապատն: *Եւ
աբրամ էր մեծատուն յոյժ. անաս-
նովք. և արծաթով. և ոսկւով:
3 *Եւ գնաց անդրէն ուստի եկն յա-
նապատն մինչև ցբեթէլ. մինչև ցտե-
ղին, ուր էր խորան նորա զառաջինն.
4 ընդ բեթէլ և ընդ անգէէ: *'Ի տե-
ղի սեղանոյն. զոր արար անդ զա-
ռաջինն. և կարդաց անդ աբրամ
5 զանուն Տն Այ: *Եւ ղովտայ որ
երթեալն էր ընդ աբրամու, էր ար-
6 ջառ և ոչխար և անասուն: *Եւ ոչ
բաւէր նոցա երկիրն բնակել 'ի միա-
սին. զի էին նոցա ստացուածք
բազումք. և ոչ կարէին բնակել 'ի
7 միասին: *Եւ եղև մարտ 'ի մէջ հով-
ուաց խաշանցն աբրամու. և 'ի մէջ
հովուաց խաշանցն ղովտայ: և քանա-
նացիքն և փերեզացիք յայնժամ բնա-
8 կեալք էին յերկրին: *Ասէ աբրամ
ցղովտ: մի լիցի կռիւ ընդ իս և ընդ
քեզ. և ընդ հովիւս իմ և ընդ հո-
վիւս քո. զի արք եղբարք եմք մեք:
9 *Ոչ ահաւասիկ երկիրդ ամ առա-
ջի քո է. մեկնեա՛ց յինէն: թէ դու
յահեակ՝ ես յաջ: եթէ դու յաջ՝ ես
10 յահեակ: *Ամբարձ ղովտ զաչս իւր.
և ետես զամ կողմանս յորդանանու
զի ամ յուռթի էր: մինչչև կործա-
նեալ էր Տր Այ զսոդոմ և զգոմոր.
իբրև զդրախտն Այ էր. և իբրև
զերկիրն եգիպտացւոց. մինչև 'ի գալ
11 'ի զոգորայ: *Եւ ընտրեաց իւր ղովտ
զամ կողմանսն յորդանանու: և չու-
եաց ղովտ յարևելից: և մեկնեցան
12 իւրաքանչիւր յեղբօրէ իւրմէ: *Եւ
աբրամ պանդխտեցաւ յերկրին քա-
նանացւոց: և ղովտ նստաւ 'ի քա-
ղաքի միում կողմանցն. և բնակե-
13 ցաւ 'ի սոդոմ: *Եւ մարդիկն սոդո-
մացւոց չարք և մեղաւորք էին առա-
14 ջի Տն Այ յոյժ: *Եւ Տր ասէ ցաբրամ
յետ մեկնելոյն ղովտայ 'ի նմանէ.
Հայեաց աչօք քովք, և տես 'ի տեղ-
ւոջէ յայդմանէ յորում դու ես. 'ի
կողմանէ հիւսիսոյ և հարաւոյ, և

Ս էր. 12.7. Ս այր. 36.7.

‖ Ծն. 12.7. Ծն. 15. 18. և 26. 3. Օրէն. 34.4.

յարևելից և 'ի ծովու ։ 15 *‖ Զի զա՟մ երկիր զոր տեսանես՝ քեզ տաց զդա, և զաւակի քում մինչև յաւիտեան ։ 16 *Եւ արարից զզաւակ քո իբրև զաւազ երկրի ։ եթէ կարիցէ ոք թուել զաւազ երկրի՝ ապա և զքո զաւակ ընդ թիւ մացէ ։ 17 * Եւ արդ արի շրջեաց ընդ երկիր յերկայնութիւն դորա և 'ի լայնութիւն դորա ․ զի քեզ տաց զդա ։ 18 * Եւ չու արարեալ աբրամու, եկն և բնակեցաւ առ կաղնւոյն մամբրէի ․ որ է 'ի քեբրոն ․ և շինեաց անդ սեղան Տն Այ ։

ԳԼ ։ ԺԴ ։

1 Եւ եղև 'ի թագաւորութեան ամարփաղայ արքայի սենարայ ․ արիոք արքայ ելլասարայ ․ և քոդողագոմոր արքայ եղամայ ․ և թարգաղ արքայ ազգաց ։ 2 *Տային պատերազմ ընդ բաղակայ արքայի սոդոմացւոց ․ և ընդ բարսայ արքայի գոմորացւոց ․ և ընդ սենայ արքայի ադամացւոց ․ և ընդ սիմոբորայ արքայի սեբոյիմացւոց ․ և ընդ թագաւորին բաղակայ ․ այնինքն է սեգովր ։ 3 * Ամենեքին սոքա դումարեցան 'ի ձորն աղի ․ որ է ծով աղից ։ 4 * Երկոտասան ամ 'ի ծառայութեան կացեալ էին քոդողագոմորայ ․ և յերեքտասաներորդում ամին ապստամբեցան ։ 5 * Եւ յամին չորեքտասաներորդի եկն քոդողագոմոր և թագաւորքն որ ընդ նմա ․ և կոտորեցին զսկայսն որ յաստարոթ կառնայիմ էին ․ և զազգս հզօրս որ ընդ նոսա ․ և զոմմացիսն 'ի շաւէ քաղաքին նոցա ։ 6 * Եւ զքոռացիսն որ 'ի լերինս սեիրայ ․ մինչև ցբևեկնի ձորոյն որ է յանապատի անդ ։ 7 * Եւ դարձան եկին յաղբիւրն դատաստանի ․ այնինքն է կադէս ․ և կոտորեցին զա՟մ իշխանս ամաղեկայ ․ և զամորհացին ․ և զբնակեալսն յասասանթամար ։ 8 * Եւ ել արքայ սոդոմացւոց և արքայ գոմորացւոց, և արքայ ադամացւոց, և արքայ սեբոյիմացւոց, և արքայ բաղակայ որ է սեգոր, և ճակատեցան ընդ նոսա 'ի պատերազմ 'ի ձորն աղից ։ 9 * Ընդ քոդողագոմորայ արքայի եղամայ ․ և ընդ թարգաղայ արքայի ազգաց ․ և ամարփաղայ արքայի սենարայ ․ և արիոքայ արքայի ելլասարայ ․ չորք թագաւորք ընդ հնգից ։ 10 * Եւ 'ի ձորն աղից ջրհորք ․ ջրհորք նաւթի ․ և փախեաւ արքայ սոդոմացւոց և արքայ գոմորացւոց ․ և անկան անդր ․ և մնացեալքն փախեան 'ի լեռնակողմն ։ 11 * Եւ առին զա՟մ աւար սոդոմացւոց և գոմորացւոց ․ և զա՟մ համբարս նոցա ․ և գնացին ։ 12 * Առին և զղովտ զեղբօրորդին աբրամու, և զինչս նորա ․ և գնացին ․ քանզի բնակեալ էր 'ի սոդոմ ։ 13 * Եւ եկն ոմն 'ի զերծելոց անտի, և պատմեաց աբրամու յայնկոյս կացելոյ ․ և նա էր բնակեալ առ կաղնեաւն մամբրէի ամուրհացւոյ, եղբօրն եսքողայ և եղբօրն ունանայ ․ որք էին դաշնաւորք աբրամու ։ 14 * Եւ իբրև լուաւ աբրամ թէ գերի վարեցաւ եղբայր իւր ղովտ ․ համարեցաւ զընտանիս իւր ․ երեքհարիւր և ութ և տասն ։ 15 * Եւ պնդեցաւ զկնի նոցա գիշերի ․ ինքն և ծառայք իւր ․ և եհար զնոսա մինչև ցքոբայ ․ որ է 'ի ձախմէ դամասկոսի ։ 16 * Եւ դարձոյց զա՟մ աւարն սոդոմացւոց ․ և զղովտ զեղբայր իւր ․ և զա՟մ ստացուածս նորա դարձոյց ։ 17 և զկանայս և զժողովուրդն ։ * Եւ ել արքայ սոդոմացւոց ընդ առաջ նորա՝ յետ դառնալոյ նորա 'ի կոտորածէ քոդողագոմորայ, և թագաւորացն որք ընդ նմա էին 'ի ձորն շաւէ ․ այնինքն էր դաշտ թագաւորաց ։ 18 * Եւ մելքիսեդեկ ‖ արքայ շաղեմայ՝ եհան հաց և գինի ․ քանզի քահանայ 19 էր Այ բարձրելոյ ։ * Եւ օրհնեաց 20 զաբրամ և ասէ ։ *Օրհնեալ է աբրամ յԱյ բարձրելոյ ․ որ արար զերկինս և զերկիր ․ օրհնեալ Ած բարձրեալ որ մատնեաց 'ի ձեռս քո զթշնամիս քո ։ և ետ նմա տասանորդս յա՟մէ ։ 21 * Եւ ասէ արքայ սոդոմացւոց ցաբրամ ․ տուր ցիս զմարդիկդ ․ և զաւարդ 22 քեզ առ ։ * Եւ ասէ աբրամ ցարքայն սոդոմացւոց ։ ձգեմ զձեռն իմ առ Ած բարձրեալ, որ արար զեր- 23 կինս և զերկիր ։ * Եթէ 'ի շղամանթէ միջէ մինչև 'ի խրացս մի կօշկաց՝ առից ես յա՟մէ որ ինչ քո իցէ ․ զի մի ասիցես թէ ես մեծացուցի զաբ- 24 րամ ։ * Բայց որչափ ինչ կերին մանկտիդ ․ և մասն արանցդ որք եկին ընդ իս ․ ոնան ․ եսքող ․ և մամբրէ ․ նոքա առցեն զբաժին իւրեանց ։

‖ Եբր. 7.1.

ԳԼ ։ ԺԵ ։

1 Յետ բանիցս այսոցիկ եղև բան Տն առ աբրամ 'ի տեսլեան և ասէ ։ մի երկնչիր աբրամ ․ ես վերակացու եղէց քեզ ․ և վարձք քո բա- 2 զում եղիցին յոյժ ։ * Եւ ասէ աբրամ ․ Տր Տր, զինչ տացես ինձ, զի ես կորնչիմ անորդի ․ և որդի մասնեկայ ընտանի իմոյ ․ այս է եղիազար դա-

մաս_

մանկացի: 3 *Եւ ասէ աբրամ. որովհետեւ ինձ ոչ ետուր զաւակ, ընտանին իմ ժառանգեսցէ զիս: 4 *Եւ վաղվաղակի ձայն Տ̃ն եղեւ առ նա եւ ասէ. ոչ ժառանգեսցէ զքեզ դա. այլ որ ելանէ 'ի քէն՝ նա ժառանգեսցէ զքեզ: 5 *Եւ եհան զնա արտաքս՝ եւ ասէ ցնա. հայեաց ընդ երկինս, եւ թուեա զաստեղս. եթէ կարասցես թուել զնոսա: եւ ասէ ցնա. այնպէս եղիցի զաւակ քո: 6 *Եւ հաւատաց աբրամ Տ̃ն. եւ համարեցաւ նմա յարդարութիւն: 7 *Եւ ասէ ցնա. ես եմ Տ̃ր Ա̃ծ քո, որ հանի զքեզ յաշխարհէն քաղդեացւոց. տալ քեզ զերկիրդ զայդ 'ի ժառանգել զդա: 8 *Եւ ասէ աբրամ. Տ̃ր Տ̃ր՝ ի՞ւ գիտասցից թէ ժառանգեցից զդա: 9 *Եւ ասէ ցնա: ա՛ռ դու ինձ երինջ երեմեան. եւ քօշ երեմեան. եւ խոյ երեմեան. եւ տատրակ. եւ աղաւնի: 10 *Եւ էառ զամ զայն. եւ յօշեաց զնոսա ընդ մէջ: եւ եդ զնոսա դէմ՝ ընդդէմ միմեանց. եւ զթռչունս ոչ յօշեաց: 11 *Եւ իջանէին թռչունքն 'ի վերայ յօշելոյ անդամաթուին նոցա: եւ նստէր առ նոքօք աբրամ: 12 *Եւ մօտ ընդ մուտս արեւուն, թմրութիւն անկանէր 'ի վերայ աբրամու. եւ ահ խաւարին հասանէր 'ի վերայ նորա: 13 *Եւ ասացաւ առ աբրամ. գիտելով գիտասջի՛ր. զի պանդուխտ եղիցի զաւակ քո յերկիր՝ որ ոչ իւր իցէ. եւ ծառայեցուսցեն զնոսա եւ չարչարեսցեն. եւ տառապեցուսցեն զնս ամս չորեքհարիւր: 14 *Բայց զազգն որում ծառայեսցեն դատեցից ես: եւ յետ այնորիկ ելցեն այսր բազում ստացուածովք: 15 *Եւ դու երթիցես առ հարս քո խաղաղութեամբ, սնեալ 'ի բարւոք ծերութեան: 16 *Եւ 'ի չորրորդում ազգի դարձցին այսրէն. քանզի չեւ ես լցեալ է մեղք ամուրհացւոցն մինչեւ ցայժմ: 17 *Եւ իբրեւ արեւն 'ի մուտս լինէր, բոցք հատանէին եւ ահա հնոց ծխեալ եւ ջահք ապայթեք հրոյ. եւ անցանէին ընդ մէջ անդամոյն յօշելոց: 18 *Յաւուր յայնմիկ եդ Տ̃ր ուխտ ընդ աբրամու. եւ ասէ. զաւակի քում տաց զերկիրդ զայդ. 'ի գետոյն եգիպտացւոց մինչեւ 'ի գետն մեծ եփրատ: 19 *Զկենեցիս. եւ զկենեզացիս. եւ զկեդմոնացիս: 20 *Եւ զքետացիս. եւ զփերեզացիս. եւ զռափայիմացիս: 21 *Եւ զամօրհացիս. եւ զքանանացիս. եւ զգերգեսացիս. եւ զյեբուսացիս:

Հռով. 4.18. — Հռով. 4.3. — Գաղատ. 3.6. — Յակոբ. 2.23. — Երեմ. 34.18. — Գործ. 7.6. — Ծնն. 12.7. եւ 13.15. — Ծննդ. 26.4. — 2. Օրին. 34.4. — 2. Մնաց. 9.26. — 3. Թագ. 4.21.

## Գլ: ԺԶ:

1 Եւ սարա կին աբրամու ոչ ծնանէր նմա: եւ էր նորա աղախին մի եգիպտացի. որոյ անուն էր ագար: 2 *Եւ ասէ սարա ցաբրամ յերկրին քանանացւոց: որովհետեւ արգել զիս Տ̃ր 'ի ծնանելոյ, արդ՝ մուտ առ աղախինդ իմ. զի արարից ինձ որդի 'ի դմանէ: եւ ունկնդիր եղեւ աբրամ ձայնի սարայի: 3 *Եւ էառ սարա կին աբրամու զագար զեգիպտացի զաղախին իւր, յետ տասն ամի բնակելոյ աբրամու յերկրին քանանացւոց, եւ ետ զնա աբրամու առն իւրում կնութեան: 4 *Եւ եմուտ առ ագար. եւ յղացաւ: իբրեւ ետես եթէ յղի է, արհամարհեցաւ տիկինն իւր՝ յաչս նորա: 5 *Եւ ասէ սարա ցաբրամ, բռնութիւն է ինձ 'ի քէն: ես ետու զաղախին իմ 'ի գիրկս քո. եւ արդ՝ իբրեւ ետես թէ յղացաւ, արհամարհեցայ ես յաչս նորա: դատ արասցէ Տ̃ր ընդ իս եւ ընդ քեզ: 6 *Եւ ասէ աբրամ ցսարա. ահաւանիկ աղախին քո 'ի ձեռս քո. արա՛ նմա զինչ հաճոյ է առաջի աչաց քոց: եւ չարչարեաց զնա սարա: եւ փախեաւ յերեսաց նորա: 7 *Եգիտ զնա հրեշտակ Տ̃ն յաղբեր ջուրց յանապատի անդ. յաղբերն որ 'ի ճանապարհին սուրայ է: 8 *Եւ ասէ ցնա հրեշտակ Տ̃ն: ագար աղախին սարայի. ուստի՞ գաս. եւ կամ յո՞ երթաս: եւ ասէ. յերեսաց սարայի տիկնոջ իմոյ փախուցեալ եմ ես: 9 *Ասէ ցնա հրեշտակ Տ̃ն: դարձի՛ր առ տիկին քո եւ հնազանդ լեր ընդ ձեռամբ նորա: 10 *Եւ ասէ ցնա հրեշտակ Տ̃ն՝ բազմացուցանելով բազմացուցից զզաւակ քո. եւ անթիւ լիցի 'ի բազմութենէ: եւ ասէ ցնա հրեշտակն Տ̃ն: 11 *Ահաւադիկ դու յղի իսկ ես. եւ ծնցիս որդի. եւ կոչեսցես զանուն նր իսմայէլ. զի լուաւ Տ̃ր տառապանաց քոց: 12 *Եւ նա եղիցի այր վայրագ. ձեռք նորա յամենեսին. եւ ձեռք ամենեցուն 'ի նա. եւ յանդիման ամենայն եղբարց իւրոց բնակեսցի: 13 *Եւ կարդաց ագար զանուն Տ̃ն որ խօսեցաւ ընդ նմա: եւ ասէ: դու ես Ա̃ծ որ հայեցար յիս: քանզի ասաց՝ եթէ յանդիման իսկ տեսի զայն. որ երեւեցաւ ինձ: 14 *Վասն այնորիկ կոչեաց զջրհորն՝ ջրհոր այնորիկ զոր յանդիման տեսի. եւ ահա է այն ընդ կադէս եւ ընդ բարադ: 15 *Եւ ծնաւ ագար աբրամու որդի: եւ կոչեաց զանուն որդւոյն իւրոյ, զոր ծնաւ նմա ագար՝

Ծննդ. 24.62. — Գաղատ. 4.24.

ագար՝ իսմայէլ: 16 * Եւ՛ աբրամ էր ամաց ութսուն և վեցից, յորժամ ծնաւ նմա ագար զիսմայէլ:

## Գլ: ԺԷ:

1 Եւ՛ եղև աբրամ ամաց իննսուն և իննուց: և երևեցաւ Տր Ած աբրամու. և ասէ ցնա. ես եմ Ած քո. հաճոյ լեր առաջի իմ. և լեր անարատ: 2 * Եւ՛ եդից զուխտ իմ ընդ իս և ընդ քեզ. և բազմացուցից զքեզ յոյժ յոյժ: 3 * Եւ՛ անկաւ աբրամ 'ի վերայ երեսաց իւրոց. և խօսեցաւ ընդ նմա Ած: 4 * Եւ՛ ասէ. և իմ ահաւասիկ ուխտ ընդ քեզ: || և եղիցես հայր բազմութեան ազգաց: 5 * Եւ՛ ոչ կոչեսցի անուն քո այսուհետև աբրամ. այլ եղիցի անուն քո աբրահամ. զի հայր ազգաց բազմաց եդից զքեզ: 6 * Եւ՛ աճեցուցից զքեզ յոյժ. և եդից զքեզ յազգս. և թագաւորք 'ի քէն ելցեն: 7 * Եւ՛ հաստատեցից զուխտ իմ ընդ իս և ընդ քեզ. և 'ի մէջ զաւակի քո յետ քո յազգս իւրեանց. յուխտ յաւիտենական՝ լինել քեզ Ած. և զաւակի քում յետ քո: 8 * Եւ՛ տաց քեզ և զաւակի քում զերկիրս զայս. յորում բնակեալս պանդխտութբ. զամ երկիրդ քանանացւոց 'ի ժառանգութիւն յաւիտենական. և եղէց նց Ած: 9 * || Իսկ դու զուխտ իմ պահեսցես. և զաւակ քո յետ քո յազգս իւրեանց: 10 * Եւ՛ այս է ուխտ իմ, զոր պահիցես ընդ իս և ընդ քեզ. և 'ի մէջ զաւակի քո յետ քո յազգս իւրեանց: 11 * Թլփատեսցի ձեր ամ արու. և թլփատեսջիք զմարմին անթլփատութե ձերոյ. և եղիցի նշանակ ուխտին ընդ իս և ընդ ձեզ: 12 * || Եւ՛ մանուկ ութօրեայ թլփատեսցի ձեր. ամ արու յազգս ձեր. ընտանեծինն. և արծաթագինն. և յամ օտարածնէ որ ոչ իցէ 'ի զաւակէ քումմէ, թլփատելով թլփատեսցի ընտանեծին տան քո. և արծաթագինք քո: 13 * Եւ՛ եղիցի ուխտ իմ 'ի վերայ մարմնոյ ձերոյ. յուխտ յաւիտենական: 14 * Արու անթլփատ որ ոչ թլփատեսցէ զմարմին անթլփատութե իւրոյ, յաւուր ութերորդի, սատակեսցի անձն այն յազգէ իւրմէ. զի զրեաց զուխտ իմ: 15 * Եւ՛ ասէ Ած ցաբրահամ. և սարայի կնոջ քո ոչ կոչեսցի անուն նր սարա. այլ սառռա եղիցի անուն նորա: 16 * Եւ՛ օրհնեսցից զնա. և տաց քեզ 'ի նմանէ որդի. և օրհնեսցից զնա. և եղիցի յազգս. և թագաւորք ազգաց 'ի նմանէ եղիցին: 17 * Անկաւ աբրահամ 'ի վերայ երեսաց իւրոց և ծիծաղեցաւ. և խօսեցաւ 'ի սրտի իւրում. և ասէ: եթէ հարիւր ամենի որդի լինիցի: և սառռա իննսնամեայ ծնանիցի: 18 * Եւ՛ ասէ աբրահամ ցԱծ: 19 Իսմայէլս այս կեցցէ առաջի քո: * Եւ՛ ասէ Ած ցաբրահամ. այո. || ահա սառռա կին քո ծնցի քեզ որդի. և կոչեսցես զանուն նր իսահակ. և հաստատեցից զուխտ իմ ընդ նմ յուխտ յաւիտենական. և ընդ զաւակի նր յետ նր: 20 * Եւ՛ վասն իսմայէլի ահա լուայ քեզ: և օրհնեցի զնա. և աճեցուցից զնա. և բազմացուցից զնա յոյժ. և երկոտասան ազգ ծնցի. և տաց զնա յազգ մեծ: 21 * Իսկ զուխտ իմ հաստատեցից ընդ իսահակայ, զոր ծնցի քեզ սառռա. 'ի ժամանակի յայսմիկ 'ի միւսում տարւոջ: 22 * Եւ՛ վախճանեաց զխօսիլն ընդ նմա: և վերացաւ Ած յաբրահամէ: 23 * Եւ՛ էառ աբրահամ զիսմայէլ զորդի իւր. և զամ զընտանածինս իւր. և զամ զարծաթագինս իւր. և զամ արու արանց որք էին 'ի տան աբրահամու. և թլփատեաց զմարմին անթլփատութե նց. 'ի ժամանակի աւուրն այնորիկ. որպ խօսեցաւ ընդ նմա Ած: 24 * Եւ՛ աբրահամ էր ամաց իննսուն և իննուց, 'ի ժամանակի յորում թլփատեաց զմարմին անթլփատութե իւրոյ: 25 * Եւ՛ իսմայէլ որդի նր երեքտասանամեայ էր, յորժամ թլփատեաց զմարմին անթլփատութե իւրոյ: 26 * 'Ի ժամանակի աւուրն այնորիկ թլփատեցաւ աբրահամ և իսմայէլ որդի նորա: 27 * Եւ՛ ամ արք տան նր. և ընտանեծինք և արծաթագինք. որք էին յազգաց օտարաց, թլփատեաց զնոսա:

|| Սիրաք. 44.20. Հռով. 4.17.
|| Գործք. 7. 8.
|| Ղևտ. 12.3. Ղուկ. 2.21. Հռով. 4.11.
|| Սորին 18. 10. և 21. 3.

## Գլ: ԺԸ:

1 Եւ՛ երևեցաւ նմա Ած առ կաղնեաւն մամբրէի. մինչ դեռ նստէր առ դրունս խորանին իւրոյ 'ի միջօրէի: 2 * || Ամբարձեալ զաչս իւր և ետես. և ահա արք երեք կային 'ի վերոյ քան զնա. և իբրև ետես. ընթացաւ ընդ առաջ նց 'ի դրանէ խորանին իւրոյ. և երկիր եպագ 'ի վերայ երկրի || և ասէ: 3 * Տր եթէ գտի շնորհս առաջի քո. մի զանցաներ 'ի ծառայէ քումմէ: 4 * Առ առից սակաւ մի ջուր. և լուասցեն զոտս ձեր. և զովասջիք ընդ ծառովս: 5 * Եւ՛ առից հաց և կերիջիք. և ապա երթիջիք զճանապարհ ձեր: փոխանակ զի դարձայք առ ծառայ ձեր: և ասեն՝ այդպէս արա. որպ ասացերդ: 6 * Եւ՛ փութացաւ աբրահամ 'ի խորանն առ սառռա. և ասէ

|| Եբր. 13.2. 1. Պետ. 4.9.
|| Սորին 19.1. Հռով. 12.10.

ասէ ցնա. փութա՛ եւ թրեա՛ գրիւս երիս ալեր նաշհոյ. եւ արա՛ նկանակս։ 7 Եւ յանդեայ ընթացաւ աբրահամ. եւ էառ որթ մի մատաղ եւ բարի. եւ ետ ցպատանին. եւ փութացոյց վաղվաղակի հասուցանել։ 8 Եւ էառ կոգի եւ կաթն. եւ զորթն զոր հասոյց. եւ եդ առաջի նոցա՛ եւ կերին։ Եւ նա կայր առաջի նոցա ընդ ծառովն։



9 Եւ ասեն ցնա. ո՞ւր է սառրա կին քո։ Նա պատասխանի ետ՝ եւ ասէ. ահաւանիկ 'ի խորանի անդ է։ 10 Եւ ասէ. դարձեալ եկից առ քեզ 'ի ժամանակի յայսմիկ 'ի սոյն աւուրս. ‖ եւ ունիցի որդի սառրա կին քո։ Եւ սառրա ունկնդնէր առ դրան խորանին. քանզի յետոյ նր՞ կայր։ 11 Եւ աբրահամ եւ սառրա ծերացեալք էին. եւ անցեալք զաւուրբք։ եւ պակասեալ էր 'ի սառրայէ լինել 'ի կանանց օրէնսն։ 12 Ծիծաղեցա՛ւ սառրա ընդ միտս. եւ ասէ. որ ինչ ցայժմ ոչ եղեւ ինձ, արդ լինիցի՞. եւ Տր իմ ծերացեալ է։ 13 Եւ ասէ Տր ցաբրահամ. զի՞ է զի ծիծաղեցա՛ւ սառրա ընդ միտս իւր՝ եւ ասէ. թէ արդարեւ ծնանիցիմ. զի ահա ես պառաւեալ եմ։ 14 Միթէ տկարանայցէ՞ առ յԱյ բան. 'ի ժամանակի յայսմիկ դարձայց առ քեզ 'ի սոյն աւուրս. եւ եղիցի սառրայի որդի։ 15 Ուրացաւ սառրա. եւ ասէ թէ ոչ ծիծաղեցայ. քանզի երկեաւ. եւ ասէ. ո՛չ այլ պէս է. այլ ծիծաղեցար։

‖ Անդ. 17.19.
Անդ. 21.1.
Հռով. 9.9.
1. Պետ. 3.6.

16 Եւ յարուցեալ անտի արանցն հայեցան ընդ երեսս սոդոմայեցւոցն եւ գոմորացւոց. եւ աբրահամ երթայր ընդ նմա. յուղարկել զնա։ 17 Եւ ասէ Տր. մի թէ թաքուստ ինչ իցէ յաբրահամէ ծառայէ իմմէ. զոր ինչ գործելոց եմ։ 18 Այլ աբրահամ լինելով եղիցի յազգ մեծ եւ 'ի բազում. ‖ եւ օրհնեսցին 'ի նա ամ ազգք երկրի։ ‖ 19 Քանզի գիտէի եթէ պատուիրեսցէ որդւոց իւրոց եւ տան իւրոյ յետ իւր. պահել զճանապարհս Տն եւ առնել զարդարութի եւ զիրաւունս։ եւ ածցէ Տր Աճ 'ի վր աբրահամու զամ, զոր խօսեցաւ ընդ նմա։ 20 Եւ ասէ Տր. աղաղակ սոդոմացւոց եւ գոմորացւոց յաճախեաց. եւ մեղք նց մեծացան յոյժ։ 21 Եւ արդ իջեալ տեսից. եթէ ըստ աղաղակին նց որ յիմ հասանէ վճարիցեն. ապա թէ ոչ զի գիտացից։ 22 Եւ դարձեալ արանցն անտի եկին 'ի սոդոմ։ Եւ աբրահամ կայր առաջի Տն։ 23 Եւ մատուցեալ աբրահամ ասէր։ միթէ կորուսանիցես զարդարն ընդ ամպարշտին. եւ լինիցի արդարն իբրեւ զամպարիշտն։ 24 Եթէ իցեն յիսուն արդար 'ի քաղաքի՞ն կորուսանիցես զնոսա. եւ ոչ ներիցես ամ տեղեացն վն յիսուն արդարոցն եթէ իցեն 'ի նմա։ 25 Քաւ լիցի քեզ առնել զայն բան. սպանանել զարդարն ընդ ամպարշտի. եւ լինիցի արդարն իբրեւ զամպարիշտն։ քաւ լիցի քեզ՝ որ դատես զամ երկիր. մի՛ արասցես զայն դատաստան։ 26 Եւ ասէ Տր. եթէ գտցի 'ի սոդոմ յիսուն արդար 'ի քաղաքի անդ, թողացուցից ամ տեղեացն վան նց։ 27 Պատասխանի ետ աբրահամ. եւ ասէ։ այժմ սկսայ խօսել ընդ Տն. բայց ես հող եմ՝ եւ մոխիր։ 28 Եթէ պակասիցեն քան զյիսուն արդար՝ հնգի՞ւ չափ, կորուսանիցես վն հնգիցն զամ քաղաքն։ եւ ասէ՝ ո՛չ կորուսից՝ եթէ գտցի անդ քառասուն եւ հինգ։ 29 Եւ յաւելեաս խօսել ընդ նմա՝ եւ ասէ. իսկ եթէ գտցի անդ քառասուն։ եւ ասէ՝ ո՛չ կորուսից վն քառասնիցն։ 30 Եւ ասէ՝ մի թէ իցէ ինչ Տր եթէ խօսիցիմ. իսկ եթէ գտցին անդ երեսուն։ եւ ասէ. ո՛չ կորուսից՝ եթէ գտցի անդ երեսուն։ 31 Եւ ասէ. որովհետեւ կարող խօսիլ ընդ Տն։ եթէ գտցի անդ քսան։ եւ ասէ՝ ո՛չ կորուսից վասն քսանիցն։ 32 Եւ ասէ. միթէ իցէ ինչ Տր. եթէ խօսեցայց եւս միւս անգամ։ եթէ գտանիցի անդ տասն։ եւ ասէ. ո՛չ կորուսից վասն տասանցն։ 33 Եւ գնաց Տր.

Անդ. 12.3.
Անդ. 22.17.

Տր ․ իբրև լռեաց 'ի խօսելոյ անտի ընդ աբրահամու ։ և աբրահամ դարձաւ 'ի տեղի իւր ։

## Գլ ։ ԺԹ ։

1 Եւ եկին երկու հրեշտակքն 'ի սոդոմ ընդ երեկս ։ և ղովտ նստէր առ դրան սոդոմացւոցն ։ իբրև ետես ղովտ՝ յարեաւ ընդ առաջ նց ․ և երկիր եպագ 'ի վերայ երեսաց իւրոց յերկիր՝ և ասէ ։ 2 *Ահաւասիկ ես տեարք ։ եկա՛յք 'ի տուն ծառայի ձերոյ՝ հանգերո՛ւք ․ և լուացի՛ք զոտս ձեր ․ և կանխեալ ընդ առաւօտս երթիջիք զճանապարհ ձեր ։ և ասեն ո՛չ ․ այլ 'ի հրապարակի աստ ագցուք ։ 3 *Եւ բռնադատեաց զնոսա յոյժ ․ և խոտորեցան առ նա ․ և մտին 'ի տուն նր ։ և արար նց ընթրիս ․ և բաղարջ եփեաց նոցա և կերին ։ 4 *Մինչև 'ի քուն մտեալ էր նոցա ․ և արք քաղաքին սոդոմացւոց պատեցին զտունն յերիտասարդաց մինչև ցծերս ․ ամենայն ժողովուրդն 'ի միասին ։ 5 *Եւ կոչէին արտաքս զղովտ ․ և ասէին ցնա ․ ո՞ւր են արքն որք մտին առ քեզ զգիշերի ․ ա՛ծ զնս առ մեզ զի գիտասցուք զնս ։ 6 *Եւ ել առ նոսա ղովտ արտաքոյ դրանն ․ և զդուռն ձգեաց զկնի իւր ։ 7 *Եւ ասէ ցնոսա ։ քա՛ւ լիցի ձեզ եղբարք ․ մի՛ գործէք զայդ չարիս ։ 8 *Են իմ երկու դստերք ․ որք զայր ոչ գիտեն ․ հանից զնս առ ձեզ ․ և արարէք ընդ նոսա , որպէս և հաճոյ իցէ ձեզ ․ բայց միայն արանցդ այդոցիկ մի՛ ինչ մեղս առնիցէք ․ որովհետև մտին ընդ յարկաւ գերանաց իմոց ։ 9 *Եւ ասեն ․ 'ի բա՛ց կաց ։ մտեր բնակել պանդխտութբ ․ միթէ և դատաստան ևս դատել այժմ և զքեզ ևս չարչարեսցուք առաւել քան զնս ։ և բռնադատէին զայրն զղովտ յոյժ ․ և մերձ էին զդուռն խորտակել ։ 10 *Եւ ձգեալ արանցն զձեռս իւրեանց կորզեցին յինքեանս զղովտ 'ի տուն անդր ․ և զդուրս տանն փակեցին ։ 11 *Եւ զարսն որք առ դուրս տանն կային հարին կուրութբ ․ 'ի փոքուէ մինչև ցմեծն ․ և լքան խնդրել ըզ դուռն ։ 12 *Եւ ասեն արքն ցղովտ ։ է ոք քո աստ փեսայ կամ որդիք կամ դստերք , կամ այլոք՝ որ քո իցէ 'ի քաղաքի աստ ․ հան զնոսա 'ի տեղւոջէ յայսմանէ ։ 13 *Զի կործանելոցեմք մեք զքաղաքս զայս ։ զի բարձրացաւ աղաղակ սոցա առաջի Տն ․ և առաքեաց զմեզ Տր սատակել զսա ։ 14 *Ել ղովտ , և խօսեցաւ ընդ փեսայս իւր ․ որք առնլոց էին զդստերս նր ․ և ասէ ․ արի՛ք՝ և ելէ՛ք 'ի տեղւոջէ աստի յայսմանէ ․ զի սատակէ Տէր զքաղաքս ։ և թուէր ծաղր առնել յաչս փեսայից իւրոց ։ 15 *Եւ իբրև եղև առաւօտ ․ փութացուցանէին հրեշտակքն զղովտ՝ և ասէին ․ արի՛ ա՛ռ զկին քո և զերկուս դստերս քո ․ զոր ունիս ․ և ե՛լ աստի՛ զի մի՛ և դու կորնչիցիս ընդ անօրէնութիս քաղաքիդ ։ 16 *Եւ նոքա խռովեցան ։ և կալան հրեշտակքն զձեռանէ նր ․ և զձեռանէ կնոջ նորա ․ և զձեռանէ երկուց դստերաց նորա ․ զի խնայեաց Տր 'ի նա ։ և հանին զնա․ և եհան 17 արտաքոյ քաղաքին ։ *Եւ եղև իբրև հանին զնոսա արտաքս , ասեն՝ ապրեցո՛ զանձն քո ․ մի՛ դառնայցես յետս ․ և մի՛ կայցես յամ կողմանս աշխարհիդ ․ զերծի՛ր 'ի լեառն ․ գուցէ 18 ընդ նմ ըմբռնիցիս ։ *Եւ ասէ ղովտ 19 ցնս ․ աղաչեմ տեա՛րք իմ ։ *Որովհետև եգիտ ծառայքո ողորմութի առաջի քո ․ և մեծ արարեր զարդարութի քո ․ զոր առնես յիս ապրիլ անձին իմոյ ․ և արդ ես ոչ կարեմ զերծանիլ 'ի լեառն ․ գուցէ հասանիցեն ինձ չա20 րիք՝ և մեռանիցիմ ։ *Ահա քաղաքս այս մե՛րձ է անկանել 'ի նա ․ որ է փոքրիկ ․ անդ ապրեցայց ․ և չէ՞ փոքր ․ և 21 կեցցէ անձն իմ վն քո ։ *Եւ ասէ ցնա՝ ահաւադիկ արարի մեծարանս երեսաց քոց ․ և 'ի բանիդ յայդմիկ չկործանել զքաղաքն ․ վն որոյ խօսեցար ։ 22 *Եւ արդ փութա՛ զերծանիլ 'ի նա ․ զի ոչ կարեմ առնել իրս ինչ մինչև անկանիցիս անդր ։ վն այնորիկ կոչեաց զանուն քաղաքին այնորիկ սե23 գոր ։ *Արեգակն ծագեաց յերկիր ․ 24 և ղովտ եմուտ 'ի սեգոր ։ *Եւ Տէր տեղաց 'ի սոդոմ և 'ի գոմոր ծծումբ 25 և հուր 'ի Տէ յերկնից ։ *Եւ կործանեաց զքաղաքսն զայնոսիկ ․ և զամ կողմանսն ․ և զամ բնակիչս քաղա26 քացն ․ և զամ բոյս երկրին ։ *Եւ դարձաւ կինն ղովտայ յետս ․ և եղև 27 արձան աղի ։ *Եւ կանխեաց աբրահամ ընդ առաւօտն 'ի տեղին ուր 28 կայր առաջի Տն ։ *Եւ հայեցաւ յերեսս սոդոմացւոց և գոմորացւոց ․ և յամ երեսս երկրի գաւառին ․ և ետես՝ և ահա ելանէր բոց երկրին իբրև 29 մրրիկ հնոցի ։ *Եւ եղև 'ի սատակել Տն զամ զքաղաքս շուրջ զբնակութբն ․ յիշեաց Ած զաբրահամ ․ և էհան արձակեաց զղովտ 'ի միջոյ կործանմանն ․ 'ի կործանել Տն զքաղաքսն յորս բնա30 կեալ էր 'ի նոսա ղովտ ։ *Եւ ել ղովտ 'ի սեգովրայ ․ և նստէր 'ի լերինն ․ և երկոքին դստերք նր ընդ նմա ․ քանզի

երկեաւ

Margin references: Եբր. 13.2. — 2. Պետ. 2. 8. — Իմաստ. 19.16. — Իմաստ. 10.6. — Իմաստ. 10.6. — 2. Օրէ. 29.23. — Եսայ. 13.19. — Երեմ. 50.40. — Եզեկ. 16.49. — Ովսէ. 11.8. — Ամովս. 4.11. — Ղուկ. 17.28. — Յուդայ 1. 7. — Ղուկ. 17.32. — Սիր. 18.1.

երկեաւ բնակել ՚ի սեգօր . և բնա_
կեաց այրի անդ ինքն և երկոքեան
դստերք նորա ընդ նմա ։ * Եւ ասէ 31
երէցն կրտսերն ։ Հայր մեր ծերա_
ցեալ է . և չիք ոք յերկրի , որ մտա_
նիցէ առ մեզ . որպէս օրէն է ամ̃ երկրի ։
* Եկ և արբուսցուք հօր մերում գի 32
նի ։ և ննջեսցուք ընդ նմա . և յարուս_
ցուք ՚ի հօրէ մերմէ զաւակ ։ * Եւ 33
արբուցին հօրն իւրեանց գինի ՚ի գի_
շերին յայնմիկ . և եմուտ երէցն ննջեաց
ընդ հօրն իւրում զգիշերն զայն . և ոչ
գիտէր ՚ի ննջելն նորա և ՚ի յառնելն ։
* Եւ եղև ՚ի վաղիւն անդր . ասէ երէցն 34
կրտսերն . ահա ննջեցի ես երեկ ընդ
հօր իմում . արբուսցուք նմա գինի և
՚ի գիշերիս յայսմիկ . և մուտ ննջեա
ընդ նմա . և յարուսցուք զաւակ ՚ի
հօրէ մերմէ ։ * Եւ արբուցին և յայնմ 35
գիշերի գինի հօրն իւրեանց . և եմուտ
կրտսերն ննջեաց ընդ հօրն իւրում .
և ոչ գիտէր ՚ի ննջելն նր̃ և ՚ի յառնելն ։
* Եւ յղացան երկոքին դստերքն ղով_ 36
տայ ՚ի հօրէ իւրեանց ։ * Եւ ծնաւ 37
երէցն որդի . և կոչեաց զանուն նորա
մովաբ . ասէ, ՚ի հօրէ իմմէ . նա է հայր
մովաբացւոց մինչև ցայսօր ժամա_
նակի ։ * Ծնաւ և կրտսերն որդի և 38
կոչեաց զանուն նր̃ ամմօն . ասէ, որդի
ազգի իմոյ ։ նա է հայր ամմօնացւոց
մինչև ցայսօր ժամանակի ։

## ԳԼ. Ի.

Եւ չուեաց անտի աբրահամ յեր_ 1
կիրն հարաւոյ . և բնակեցաւ ընդ
կադէս և ընդ սուր . և պանդխտեցաւ
՚ի գերարայ ։ * Եւ ասաց աբրահամ 2
վս̃ սառրայի կնոջն իւրոյ , թէ քոյր
իմ է ։ և առաքեաց աբիմելէք արքայ
գերերացւոց , և էառ զսառրա ։ * Եւ 3
եկն Ած առ աբիմելէք ՚ի տեսլեան
գիշերոյ . և ասէ՝ ահա մեռանիս վս̃
կնոջդ՝ զոր առեր . զի կին առնակին է ։
* Բայց աբիմելէք ոչ մերձեցաւ ՚ի 4
նա . և ասէ . Տր̃, զազգ մի զանգէտ և
զարդար կորուսանիցես ։ * Ոչ ապա_ 5
քէն նա ասաց ցիս քոյր իմ է . և սա ա_
սաց ցիս եղբայր իմ է . և ես սրբութ̃
սրտի և արդարութ̃ ձեռաց արարի
զայս ։ * Եւ ասէ ցնա Ած ՚ի տեսլեանն ։ 6
Ես գիտացի զի սրբութ̃ սրտի արա_
րեր դու զայդ և խնայեցի ես ՚ի քեզ ,
չմեղանչել քեզ յիս . վս̃ այնորիկ ոչ
ետու թոյլ քեզ մերձենալ ՚ի դա ։
* Բայց արձակեա զկինդ այր իւր՝ 7
զի այր մարգարէ է . և արասցէ աղօթս
վս̃ քո . և կեցցես ։ ապա թէ ոչ տացես,
գիտեա զի մեռանիս դու՝ և ամ̃ որ ինչ

8 քոյ է ։ * Եւ կանխեաց աբիմելէք ընդ
առաւօտն և կոչեաց զամ̃ զծառայս
իւր . և խօսեցաւ զամ̃ զբանս զայսո_
սիկ յականջս նոցա . և զահի հարան
9 ամ̃ մարդիկն յոյժ ։ * Եւ կոչեաց ա_
բիմելէք զաբրահամ . և ասէ ցնա .
զինչ գործեցեր դու զայդ ընդ մեզ .
միթէ մեղաք ինչ քեզ՝ զի ածեր ՚ի վր̃
իմ և ՚ի վերայ թագաւորութե̃ իմոյ
մեղս մեծամեծս . գործ՝ զոր ոչ ոք
10 գործէ, գործեցեր ընդ իս ։ * Եւ ասէ
աբիմելէք ցաբրահամ . զինչ տեսեալ
11 արարեր զբանդ զայդ ։ * Եւ ասէ աբ
րահամ . զի ասացի՝ եթէ գուցէ ոչ
գուցէ Ած պաշտութիւն ՚ի տեղւոջս
յայսմիկ . և զիս սպանանիցեն վասն
12 կնոջդ իմոյ ։ * Բայց ‖ արդարև՝ քոյր ‖ Ծն. 12.13.
իմ է ՚ի հօրէ և ոչ ՚ի մօրէ . և եղև ինձ
13 կին ։ * Եւ եղև յորժամ՝ եհան զիս
Ած ՚ի տանէ հօր իմոյ . և ես ասացի
ցդա . զայս արդարութի արասցես
ընդ իս ։ յամ̃ տեղիս ուր և երթիցուք,
ասասջիր զինէն եթէ եղբայր իմ է ։
14 * Եւ ‖ էառ աբիմելէք հազար սա_ ‖ Ծն. 21.23.
տեր . և արջառ և ոչխար , ծառայս և
աղախնայս , և ետ աբրահամու . և ետ
15 ցնա զսառա զկին իւր ։ * Եւ ասէ ա_
բիմելէք ցաբրահամ . ահաւասիկ
երկիրդ իմ առաջի քո . ուր հաճոյ իցէ
16 քեզ բնակեաց ։ * Եւ ցսառրայ ասէ .
ահա ետու հազար սատեր եղբօր քում .
այն եղիցի քեզ ՚ի պատիւ երեսաց քոց .
և ամ̃ կանանց որք ընդ քեզ են . և
17 զամ̃ արդար խօսիցիս ։ * Եւ եկաց յա_
ղօթս աբրահամ առ Ած . և բժշկեաց
զաբիմելէք և զկին նր̃ . և զաղախնայս
18 նորա, և ծնանէին ։ * Զի փակելով
փակեաց Տէր արտաքուստ զամ̃ ար_
գանտ ՚ի տան աբիմելէքայ . վս̃ սառ_
րայի կնոջ աբրահամու ։

## ԳԼ. ԻԱ.

1 Եւ Տր̃ յայց ել սառրայի ‖ որպէս և ‖ Ծն.
ասաց . և արար Տր̃ սառրայի ամ̃ 17. 19.
2 և խօսեցաւ ։ * Եւ յղացաւ ‖ և ծնաւ և 18.10
սառրա աբրահամու որդի ծերութե̃ . ‖ Գաղա.
ըստ ժամանակին որպէս և խօսեցաւ 4.23.
3 ընդ նմա Ած ։ * Եւ կոչեաց աբրա_ Եբր.
համ զանուն որդւոյ իւրոյ, զոր ծնաւ 11.11.
4 նմա սառրա իսահակ ։ * Եւ թլփա_ Գործ.
տեաց աբրահամ զիսահակ զորդի իւր 7. 8.
յաւուր ութերորդի . որպէս և պատ_ ‖ Ծն.
5 ուիրեաց նմա Տր̃ Ած ։ * Եւ ‖ աբրա_ 17.10.
համ հարիւրամեան էր յորժամ եղև Գործ.
6 նմա իսահակ որդի իւր ։ * Եւ ասէ 7. 8.
սառա . ծաղր արար զիս Ած . զի որ ‖ [illegible]
7 և լսիցէ ուրախ լիցի ընդ իս ։ * Եւ 1. 2.
ասէ . ով պատմեսցէ աբրահամու է_

թէ սնուցանէ զմանուկ սառա. զի ծնայ որդի 'ի ծերութեան իմում: *Եւ 8 աճեաց մանուկն. եւ հատուցաւ 'ի ստենէ. եւ արար աբրահամ ուրախութիւն մեծ. յաւուր յորում հատուցաւ 'ի ստենէ իսահակ որդի նր՟: *Եւ տե_ 9 սեալ սառայի զորդին ագարայ եգիպտացւոյ, որ եղեւ աբրահամու, զի խաղայր ընդ իսահակայ որդւոյ իւրում: եւ ասէ ցաբրահամ: *Մերժեա 10 զաղախինդ եւ զորդի դորա. զի մի ժառանգեսցէ որդի աղախնոյդ ընդ որդւոյ իմում իսահակայ: *Եւ խիստ 11 թուեցաւ բանն առաջի աբրահամու վասն որդւոյ նորա: *Եւ ասէ Ա՟Ծ 12 ցաբրահամ. մի ինչ խիստ թուեսցի առաջի քո վասն մանկանն եւ վասն աղախնոյն. զամ որ զինչ ասիցէ քեզ սառայ՝ լուր ձայնի նորա. զի իսահակաւ կոչեսցի քեզ զաւակ: *Բայց 13 զորդի աղախնոյն արարից յազգ մեծ. զի սերմն քո է: *Յարեաւ աբրահամ 14 ընդ առաւօտն. եւ էառ հաց եւ տիկ ջրոյ. եւ ետ ցագար. եւ եդ յուս նորա զմանուկն. եւ արձակեաց զնա: եւ երթեալ մոլորեալ շրջէր յանապատի անդ առ ջրհորովն երդմանն: *Եւ 15 նուաղեաց ջուր 'ի տկէ անտի. եւ ընկէց զմանուկն 'ի ներքոյ միոյ եղեւնի ծառոյ: *Եւ երթեալ նստաւ յան_ 16 դիման նորա 'ի բացէ իբրեւ վտաւանաւ: զի ասէր՝ թէ ոչ տեսից զմահ որդւոյն իմոյ. եւ նստէր յանդիման նորա: ձայն բարձեալ մանկանն լայր: *Եւ լուաւ Ա՟Ծ ձայնի մանկանն, 'ի 17 տեղւոջէն ուր էր: եւ կոչեաց հրեշտակ Ա՟Յ զագար յերկնից՝ եւ ասէ ցնա. զի՞նչ է այդ ագար. մի երկնչիր. զի լուաւ Ա՟Ծ ձայնի որդւոյ քոյ 'ի տեղւոջ անտի ուր է: *Արի առ զմանուկն 18 քո. եւ զօրացո՛ զնա ձեռամբ. զի յազգ մեծ արարից զնա: *Եւ եբաց Ա՟Ծ 19 զաչս նորա. եւ ետես ջրհոր ջրոյ կեն_դանւոյ. եւ չոգաւ ելից զտիկն ջրով եւ արբոյց մանկանն. եւ էր Ա՟Ծ ընդ մանկանն: *Եւ աճեաց եւ եղեւ աղեղ_ 20 նաւոր: *Եւ բնակէր յանապատին 21 փառանու. եւ էառ նմա մայրն նորա կին յերկրէն եգիպտացւոց: *Եւ 22 եղեւ 'ի ժամանակին յայնմիկ. խօսեցաւ աբիմելէք եւ ոքոզաթ տաճարապետ նորա. եւ փիքող սպարապետ զօրաց նորա. եւ ասէ ցաբրահամ: Ա՟Ծ ընդ քեզ է յամենայնի զինչ եւ գործես: *Արդ երդուիր ինձ յԱ՟Ծ չմե_ 23 ղանչել ինձ եւ մի զաւակի իմում. եւ անուանս իմոյ: այլ ըստ արդարութեանն զոր արարի ընդ քեզ՝ արաս_

Գաղա. 4.30. Ճառ. 30.23. Հռով. 9.7. Եբրայ. 11.18. եցա. ջայ. Ա Եր. 20.13.

ցես ընդ իս. եւ երկրիս յորում բնա_կեալ ես 'ի սմա: 24 *Եւ ասէ աբրա_համ. ես երդնում: 25 *Եւ յանդիմանեաց աբրահամ զաբիմելէք, վասն ջրհորոյն ջրոց զորս հանին ծառայքն աբիմելէքայ: 26 *Եւ ասէ ցնա աբի_մելէք. ոչ գիտացի ո՛ արար զայն իր: եւ դու ոչ պատմեցեր ինձ. եւ իմ ո՛չ էր 27 լուեալ՝ բայց այսօր: *Եւ էառ աբ_րահամ արջառս եւ ոչխարս՝ եւ ետ ա_բիմելէքայ. եւ եդին երկոքեան ուխտ 28 ընդ միմեանս: *Եւ կացոյց աբրա_համ եօթն որոջ ոչխարաց միայն: 29 *Եւ ասէ աբիմելէք ցաբրահամ. զի՞նչ են այս եօթն որոջք ոչխարացդ, 30 զորս կացուցեր միայն: *Եւ ասէ՝ զայդ եօթն որոջս առցես յինէն, զի եղիցին ինձ 'ի վկայութիւն, թէ ես փո_ 31 րեցի զջրհորդ զայդ: *Վասն այնորիկ անուանեաց զանուն տեղւոյն այնո_ 32 րիկ ջրհոր երդման: *Զի անդ երդուան երկոքեան միմեանց. եւ անդ ե_դին ուխտ. առ ջրհորին երդման: յարեաւ աբիմելէք. եւ ոքոզաթ տա_ճարապետ նր՟. եւ փիքող սպարապետ զօրաց նր՟. եւ դարձան անդրէն յեր_ 33 կիրն փղշտացւոց: *Եւ տնկեաց աբ_րահամ տունկ առ ջրհորովն երդման. եւ կարդաց անդ զանուն Տ՟ն. Ա՟Ծ յաւի_ 34 տենական: *Եւ պանդխտեցաւ աբ_րահամ յերկիրն փղշտացւոց աւուրս բազումս:

## ԳԼ. ԻԲ.

1 Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ: փորձեաց Ա՟Ծ զաբրահամ՝ եւ ասէ ցնա. աբրահա՛մ. աբրահամ: եւ 2 նա ասէ աւասիկ եմ: *Եւ ասէ ցնա. առ դու զորդիդ քո զսիրելի. զոր սի_րեցեր զիսահակ. եւ գնա՛ դու յերկիր բարձր. եւ հանցես զդա անդ յողջա_կէզ 'ի վերայ միոյ լերանց՝ յորոյ ա_ 3 սացից քեզ: *Եւ յարեաւ աբրահամ ընդ առաւօտն, համետեաց զէշ իւր: եւ էառ ընդ իւր երկուս ծառայս: եւ զիսահակ զորդի իւր: եւ պատառեաց փայտ յողջակէզ՝ յարեաւ եւ գնաց: եւ եկն 'ի տեղին. զոր ասաց նմա Ա՟Ծ: 4 *Եւ յաւուրն երրորդի համբարձ աբ_րահամ զաչս իւր. եւ ետես զտեղին 'ի 5 հեռաստանէ: *Եւ ասէ աբրահամ ցպատանիս իւր. նստարո՛ւք դուք այդր համդերձ իշովդ. եւ ես եւ պատանեակս երթիցուք մինչեւ ցանդր, եւ երկիր պագցուք. եւ դարձցուք առ ձեզ. 6 *Եւ էառ աբրահամ զփայտ ողջա_կիզին. եւ եդ 'ի վերայ իսահակայ որդ_ւոյ իւրոյ. եւ էառ 'ի ձեռն զհուրն եւ զսուր.

Յուդթ. 8.22. Եբրա. 11.17.

զսուր. և գնացին երկոքեան 'ի միա_
սին: *Եւ ասէ իսահակ ցաբրահամ 7
ցհայր իւր. հայր: և նա ասէ. զի՞ է
որդեակ: և նա ասէ՝ ահա հուր՝ և
ահա փայտ. ո՞ւր է ոչխար յողջակեզ:
*Եւ նա ասէ. Ա՛ծ տեսցէ իւր ոչ_ 8
խար յողջակեզ որդեակ: գնացին եր_
կոքեան 'ի միասին: *Եւ եկին 'ի տե_ 9
ղին. զոր ասաց նմա Ա՛ծ. անդ շինեաց
սեղան աբրահամ. և եդ 'ի վ՟ր զփայտն:
և կապեաց զիսահակ զորդի իւր. և
եդ զնա 'ի սեղանն 'ի վերայ փայտին:



Յակոբ. 2.21.

*Եւ ձգեաց աբրահամ զձեռն առ_ 10
նուլ զսուրն և զենուլ զորդի իւր:
*Եւ կոչեաց զնա հրեշտակ Տն յերկ_ 11
նից՝ և ասէ. աբրահամ. աբրահամ. և
նա ասէ ցնա. ահաւասիկ եմ: *Եւ ասէ. 12
մի՛ մխեր զձեռն քո 'ի պատանեակդ. և
մի՛ ինչ առներ դմա. զի այժմ գիտացի
թէ երկիւղած ես դու յԱ՛յ. և ոչ
խնայեցեր յորդւոյդ քո սիրելւոյ վասն իմ:
*Համբարձ աբրահամ զաչս իւր և 13
ետես. և ահա խոյ մի կախեալ կայր
զծառոյն սաբեկայ զեղջերաց: և գնաց
աբրահամ և էառ զխոյն. և եհան զնա
յողջակեզ փոխանակ իսահակայ որդ_
ւոյ իւրոյ: *Եւ կոչեաց աբրահամ 14
զանուն տեղւոյն այնորիկ Տր ետես.
զի ասիցեն ցայսօր. 'ի լերինն յայնմիկ
Տր երևեցաւ: *Եւ կոչեաց հրեշտակ 15
Տն զաբրահամ երկիցս անգամ՝ յերկ
նից՝ և ասէ: *Յանձն իմ երդուայ՝ 16



ասէ Տր. փոխանակ զի արարեր զդու_
զբանդ զայդ. և ոչ խնայեցեր յոր_
դւոյդ քո սիրելւոյ վասն իմ. այո՛:
17 *Օրհնելով օրհնեցից զքեզ. և բազ_
մացուցանելով բազմացուցից զզաւ_
ակ քո իբրև զաստեղս երկնից բազ_
մութեամբ. և իբրև զաւազ առ ափն ծո_
վու. և ժառանգեսցէ զաւակ քո
զքաղաքս հակառակորդաց իւրոց:
18 *Եւ օրհնեսցին 'ի զաւակի քում
ամենայն ազգք երկրի. փոխանակ զի
19 լուար ձայնի իմում: *Դարձաւ աբ_
րահամ առ պատանիսն իւր. և յարու_
ցեալ գնացին 'ի միասին 'ի Ջրհորն
երդման. և բնակեաց աբրահամ առ
20 Ջրհորն երդման: *Եւ եղև յետ բա_
նիցս այսոցիկ. պատմեցաւ աբրահա_
մու, թէ ահա ծնաւ մեղքայ որդիս
21 նաքովրայ եղբօր քում: *Զովքս
զանդրանիկն նորա: և զբաւ զեղբայր
նորա. և զկամուէլ հայր ասորւոց:
22 *Եւ զքազադ. և զազաւ. և զփաղ_
դաս. և զյեդթափ. և զբաթուէլ:
23 *Եւ բաթուէլ ծնաւ զռեբեկայ.
ութ սոքա զորս ծնաւ մեղքա նաքով_
24 րայ եղբօրն աբրահամու: *Եւ հարճն
նորին որոյ էր անուն ռեեմայ, ծնաւ
և նա զտաբեկ. և զգաամ. և զտոքոս.
և զմոխքայ:

Սաղմ. 104.9. Սիրաք. 44.21. 1.Մնաց. 2.52. Ղուկ. 1.73. Եբրայ. 6.13. Ծն. 12.3: և 18.18. Ծն. 26.4. Սիրաք. 44.25. Գործ. 3.25.

## ԳԼ: ԻԳ:

1 Եւ եղեն կեանք սառրայի հարիւր
2 և քսան և եօթն ամ: *Եւ մե_
ռաւ սառրայ 'ի քաղաքի արբոկայ 'ի
ձորն. այնինքն է քեբրոն՝ յերկրին
քանանացւոց: և եկն աբրահամ կո_
3 ծել զսառրայ՝ և սուգ առնուլ: *Եւ
յարեաւ աբրահամ 'ի մեռելոյ անտի
իւրմէ: և խօսեցաւ ընդ որդիսն քետայ՝
4 և ասէ: *Պանդուխտ և նժդեհ եմ
ես 'ի միջի ձերում: արդ՝ տուք ինձ
ստացուած գերեզմանի ընդ ձեզ. և
5 թաղեցից զմեռեալդ իմ: *Պատաս_
խանի ետուն որդիքն քետայ աբրահա
6 մու՝ և ասեն. *Ունկն դիր մեզ Տր.
թագաւոր Ա՛յ ես 'ի միջի մերում.
յընտիր շիրմանց մերոց թաղեա զմե_
ռեալդ քո. զի ոչոք 'ի մէնջ արգելու
7 'ի քէն զշիրիմն: *Յարեաւ աբրա_
համ և երկիր եպագ ժողովրդեան
8 երկրին որդւոցն քետայ: *Եւ խօսե_
ցաւ ընդ նոսա աբրահամ՝ և ասէ.
եթէ յօժարիցէք 'ի մտի ձերում թա_
ղել զմեռեալդ յերեսաց իմոց, ունկն
դիք ինձ. և խօսեցարուք վասն իմ
9 ընդ եփրոնի որդւոյ սահառայ: *Եւ
տացէ ինձ զայրն կրկին. որ է 'ի վի_
ճակի ագարակին իւրոյ՝ արծաթոյ,

որչափ և արժան իցէ․ տացէ զնա ինձ ՚ի միջի ձերում ՚ի ստացուած բնակաց։ 10 * Եւ եփրոն նստէր ՚ի մէջ որդւոցն քետայ։ Պատասխանի ետ եփրոն քետացի աբրահամու՝ և ասէ լուիլու որդւոցն քետայ․ և ամենեցուն որք մտանէին ընդ դուռն քաղաքին նր։ 11 * Եւ ասէ․ յիս դարձ տէր․ և ունկն դիր ինձ․ զագարակն ետու քեզ․ և զայրն որ ՚ի նմա տաց քեզ․ առաջի ամ քաղաքակցաց իմոց ետու քեզ․ թաղեա զմեռեալն քո։ 12 * Եւ երկիրեպագ աբրահամ առաջի ժողովրդեան երկրին։ 13 * Եւ խօսեցաւ ընդ եփրոնի յականջս ժողովրդեան երկրին․ և ասէ․ որովհետև անսացեր ինձ, ունկն դիր ինձ․ տաց քեզ արծաթ ընդ ագարակին․ առ յինէն․ և թաղեցից անդր զմեռեալն։ 14 * Պատասխանի ետ եփրոն աբրահամու՝ և ասէ ցնա․ 15 * Ոչ տէր իմ․ լուայ թէ գետինն չորեքհարիւր սատերի արծաթոյ է․ ընդ իս և ընդ քեզ զինչ է այն․ բայց դու թաղեա զմեռեալն քո։ 16 * Եւ իբրև լուաւ աբրահամ յեփրոնէ․ ‖ կշռեաց աբրահամ զարծաթն եփրոնի, զոր խօսեցաւ յականջս որդւոցն քետայ, չորեքհարիւր սատեր արծաթոյ ընտրոյ վաճառականաց։ 17 * Եւ հաստատեցաւ ագարակն եփրոնի, որ է առ կրկնովլ այրիւն յանդիման մամբրէի․ ագարակն և այրն, որ է ՚ի նմա․ և ամենայն ծառաստանն, որ էր յագարակի անդ, շուրջ յամենայն սահմանս նորա։ 18 * Ի ստացուածս աբրահամու առաջի որդւոցն քետայ․ և որք մտանէին ընդ դուռն քաղաքին նորա։ 19 * Եւ յետ այնորիկ թաղեաց աբրահամ զսառայ զկին իւր ՚ի կրկնում այրի ագարակին․ որ է յանդիման մամբրէի․ այն է քեբրոն, յերկրին քանանացւոց։ 20 * Եւ հաստատեցաւ ագարակն և այրն, որ է ՚ի նմա՝ աբրահամու․ ՚ի ստացուածս շիրմաց յորդւոցն քետայ։

‖ Ստր․ 25․10․

## Գ Լ․ ԻԴ․

1 Եւ աբրահամ էր ծերացեալ և անցեալ զաւուրբք․ և Տր օրհնեաց զաբրահամ ամենայնիւ։ 2 * Եւ ասէ աբրահամ ցծառայն իւր ցերէց տան իւրոյ, ցիշխան ամենայն ընչից նորա․ ‖ դիր զձեռն քո ընդ երանօք իմօք։ 3 * Եւ երդմնեցուցից զքեզ ՚ի Տր, յԱծ երկնից․ և յԱծ երկրի․ զի մի առցես կին որդւոյ իմում իսահակայ ՚ի դստերաց քանանացւոց․ յորոց միջի ես բնակեալս եմ։ 4 * Այլ յերկիրն իմ ուստի ելեալեմ երթիցես․ և ՚ի տուն իմ․ և առցես դու անտի կին որդւոյ իմում իսահակայ։ 5 * Ասէ ցնա ծառայն․ գուցէ կինն ոչ կամիցի գալ ընդ իս յերկիրս յայս․ դարձուցանելով դարձուցից զորդի քո յերկիրն ուստի ելեր։ 6 * Եւ ասէ աբրահամ․ զգոյշ լեր․ մի դարձուցանիցես զորդի իմ անդր։ 7 * Տր Ած երկնից, և Ած երկրի, որ էառ զիս ՚ի տանէ հօր իմոյ, և յերկրէն ուստի ծնեալ էի, որ խօսեցաւն ընդ իս՝ և երդուաւ ինձ, և ասէ․ ‖ զաւակի քում տաց զերկիրդ զայդ, նա առաքեսցէ զհրեշտակ իւր առաջի քո․ և առցես անտի կին որդւոյ իմում իսահակայ։ 8 * Ապա թէ ոչ կամիցի կինն գալ ընդ քեզ յերկիրս այս, քաւեալ լիջիր դու յերդմանէդ յայդմանէ․ բայց միայն զորդեակ իմ մի դարձուցանիցես անդր։ 9 * Եւ եդ ծառայն աբրահամու զձեռն իւր ընդ երանօք տեառն իւրոյ՝ և երդուաւ նմա վասն բանիս այսորիկ։ 10 * Եւ էառ ծառայն տասն ուղտ յուղտուց տեառն իւրոյ՝ և գնաց․ և յամ բարութեց Տն իւրոյ ընդ իւր․ և յարեաւ և գնաց ՚ի միջագետս ՚ի քաղաք նաքովրայ։ 11 * Եւ նստոյց զուղտսն արտաքոյ քաղաքին․ առ ջրհորոյ ջրոյն ը̃ երեկս յորժամ ջրուորն ելանէր․ և ասէ․ 12 * Տէր Ած Տեառն իմոյ աբրահամու, յաջողեա առաջի իմ այսօր․ և արա ողորմութի ընդ Տն իմում՝ աբրահամու։ 13 * Ահաւասիկ ես կամ ՚ի վերայ աղբեր ջրոյս․ և դստերք բնակչաց քաղաքիս ելանեն հանել ջուր։ 14 * Եւ եղիցի կոյս մի որում ես ասացից, թէ խոնարհեցո զսափորդ քո զի արբից, և ասասցէ ցիս՝ արբ․ և ուղտուցդ քոց ես արբուցից, մինչև դադարեսցեն յըմպելոյ, զայն պատրաստեցեր ծառայի քում իսահակայ․ և այնու գիտացից եթէ արարեր ողորմութի տեառն իմում աբրահամու։ 15 * Եւ եղև մինչչև կատարեալ էր նր զխօսսն ՚ի մտի իւրում։ և ահա ռեբեկա ելանէր․ որ ծնեալն էր բաթուէլի որդւոյ մելքայ․ կնոջ նաքովրայ եղբօր աբրահամու․ և ունէր սափոր յուս իւր։ 16 * Եւ էր կոյսն գեղեցիկ երեսօք յոյժ․ կոյս՝ զոր այր ոչ գիտէր․ էջ յաղբիւրն․ և ելից զսափորն իւր՝ և ել։ 17 * Ընթացաւ ծառայն ընդ առաջ նորա՝ և ասէ․ արբո ինձ սակաւ մի ջուր ՚ի սափորոյ այտի։ 18 * Եւ նա ասէ․ արբ Տր․ և փութացաւ իջոյց զսափորն ՚ի վերայ բազկաց իւրոց․ և արբոյց նմա․ 19 * Մինչև դադարեաց յըմպելոյ։ և ասէ՝ և ուղտուցդ քոց հանից ջուր մինչև ամենեքեան արբցեն։

‖ Վեր 12․7․ և 13․15․ և 15․18 ‖ Ստր․ 26․3․

* Եւ

20 *Եւ փութացաւ թափեաց զսափորն յաւազանն. եւ ընթացաւ դարձեալ 'ի ջրհորն հանել. եւ եհան ջուր ամենայն ուղտուցն նորա։ 21 *Եւ այրն միտ դնէր նմա. եւ լուռ կայր 'ի միտ առնուլ. եթէ յաջողեաց Տէր զճանապարհն նր՟՝ եւ թէ ոչ։ 22 *Եւ եղեւ իբրեւ դադարեցին ամենայն ուղտքն յըմպելոյ, եւ էառ այրն գինդս ոսկիս մի մի ըստ դահեկանի ձուլոյ. եւ երկուս ապարանջանս 'ի ձեռս նորա. 'ի տասն դահեկանէ ձուլ նոցա։ 23 *Եւ եհարց զնա՝ եւ ասէ. ո՞յր դուստր ես դու. պատմեա՛ ինձ՝ թէ իցէ 'ի տան քում մեզ տեղի իջավանաց։ 24 *Եւ ասէ ցնա. դուստր բաթուելի եմ ես որդւոյ մելքայ. զոր ծնաւ նաքովրայ։ 25 *Եւ ասէ ցնա. յարդ եւ խոտ շատ է մեր. եւ տեղի իջավանաց։ 26 *Խնդաց այրն. եւ երկիր եպագ Տ՟Ն։ 27 *Եւ ասէ. օրհնեալ Տ՟ր Ա՟Ծ տ՟ն իմոյ աբրահամու. որ ոչ վրիպեցոյց զարդարութ՟ի իւր եւ զճշմարտութ՟ի 'ի տեառնէ իմմէ. եւ ինձ յաջողեաց Տ՟ր 'ի տուն եղբօր Տ՟Ն իմոյ։ 28 *Եւ ընթացաւ աղջիկն պատմեաց 'ի տան հօր իւրոյ ըստ բանիցն այնոցիկ։ 29 *Եւ ռեբեկայ էր եղբայր՝ որում անուն էր լաբան։ եւ ընթացաւ լաբան առ այրն արտաքս յաղբիւրն։ 30 *Իբրեւ ետես զգինդսն եւ զապարանջանսն 'ի ձեռսն քեռ իւրոյ. եւ զի լուաւ զբանսն յռեբեկայ քեռէ իւրմէ՝ որ ասէր. թէ այսպէս ինչ խօսեցաւ ընդ իս այրն։ եւ եկն առ այրն, մինչ կայր 'ի վերայ ուղտուց իւրոց առ աղբերն։ 31 *Եւ ասէ ցնա. եկ՝ մուտ 'ի տուն օրհնեալ Տ՟Ն. զի՞ կաս արտաքոյ. զի ես պատրաստեցի տուն եւ տեղի ուղտուցդ։ 32 *Եմուտ այրն 'ի տուն անդր եւ իջոյց յուղտուցն։ եւ ետուն յարդ եւ խոտ ուղտուցն. եւ ջուր լուանալոյ ոտից նր՟. եւ ոտից նոցա որք ընդ նմայն էին։ 33 *Եւ եդին հաց առաջի նր՟ ուտել։ եւ նա ասէ. ոչ կերայց մինչեւ խօսեցայց զբանս իմ։ եւ ասեն խօսեաց։ 34 *Եւ՛ ասէ. ծառայ աբրահամու եմ ես։ 35 *Եւ Տէր օրհնեաց զտէր իմ յոյժ։ եւ բարձրացաւ. եւ ետ նմա արջառ եւ ոչխար. եւ արծաթ եւ ոսկի. ծառայս. եւ աղախնայս. ուղտս եւ էշս։ 36 *Եւ ծնաւ սառայ կին տեառն իմոյ որդի մի Տ՟Ն իմում. յետ ծերութ՟ե իւրոյ. եւ նմա ետ զամ՟ ինչ որ էր նր՟։ 37 *Եւ երդմնեցոյց զիս Տ՟ր իմ՝ եւ ասէ. ո՛չ առցես կին որդւոյ իմում իսահակայ 'ի դստերաց աստի քանանացւոց. յորոց միջի ես պանդխտեալս եմ յերկրի սոցա։ 38 *Այլ 'ի տուն հօր իմոյ երթիցես եւ 'ի տոհմ իմ. եւ առցես անտի կին որդւոյ իմում։ 39 *Եւ՛ ես ասացի ցտէրն իմ։ գուցէ ոչ գայցէ կինն ընդ իս։ 40 *Եւ ասէ ցիս. Տէր Ա՟Ծ իմ որում հաճոյ եղէ առաջի նորա. նա առաքեսցէ զհրեշտակ իւր ընդ քեզ. եւ յաջողեսցէ զճանապարհ քո. եւ առցես կին որդւոյ իմում յազգէ իմմէ. եւ 'ի տանէ հօր իմոյ։

41 *Եւ՛ յայնժամ քաւեալ լիցիս 'ի նզովից աստի իմոց, յորժամ երթիցես 'ի տոհմն իմ՝ եւ ոչ տայցեն, քաւեալ լիցիս յերդմանէ աստի իմմէ։ 42 *Եւ իբրեւ եկի այսօր յաղբիւրն՝ ասեմ։ Տ՟ր Ա՟Ծ Տ՟Ն իմոյ աբրահամու, եթէ յաջողեցեր ինձ զճանապարհս իմ, զոր ես այժմիկ եկեալ եմ։ 43 *Ահաւասիկ ես հասեալ կամ 'ի վերայ աղբեր ջրոյս. եւ դստերք մարդկան քաղաքիս ելանեն տանել ջուր. եւ եղիցի կոյս, ցոր ես ասացից թէ արբո ինձ սակաւ մի ջուր 'ի սափորոյդ քումմէ։ 44 *Եւ ասասցէ ցիս՝ թէ արբ. եւ ուղտուցդ եւս քոց հանից ջուր. այնէ կին՝ զոր պատրաստեաց Տ՟ր ծառայի իւրում իսահակայ. եւ այնու գիտացից՝ թէ արարեր ողորմութ՟ի ընդ Տ՟Ն իմում աբրահամու։ 45 *Եւ եղեւ մինչչեւ իմ կատարեալ էր զխօսս 'ի մտի իմում, անդէն վաղվաղակի ելանէր ռեբեկայ. եւ ունէր սափոր յուս իւր։ էջ յաղբիւրն՝ եւ էհան ջուրեւ ասեմ ցնա արբո ինձ։ 46 *Եւ փութացեալ իջոյց զսափորն յինքենէ. եւ ասէ՝ արբ դու. եւ ուղտուցդ եւս քոց արբուցից։ եւ արբի. եւ ուղտուցն իմոց արբոյց։ 47 *Եւ հարցի ցնա՝ եւ ասեմ. ո՞յր դուստր ես դու՝ պատմեա ինձ. եւ նա ասէ, դուստր բաթուելի եմ ես՝ որդւոյ նաքովրայ. զոր ծնաւ նմա մելքա. եւ եդի գինդս յականջս նր՟. եւ ապարանջանս 'ի ձեռս նորա. եւ խնդացի։ 48 *Եւ երկիր պագի Տ՟Ն. եւ օրհնեցի զՏ՟ր Ա՟Ծ տեառն իմոյ աբրահամու. որ յաջողեաց ինձ 'ի ճանապարհի աստ ճշմարտութ՟ե. առնուլ զդուստր եղբօր Տ՟Ն իմոյ որդւոյ նորա։ 49 *Արդ՝ եթէ առնէք դուք շնորհս եւ արդարութ՟ի առ տէրն իմ. պատմեցէք ինձ։ ապա թէ ոչ՝ ցուցէք ինձ զի դարձայց յաջ կամ յահեակ։ 50 *Պատասխանի ետուն լաբան եւ բաթուէլ՝ եւ ասեն. 'ի Տ՟Է ել իրդ այդ. եւ մեք ո՛չ կարեմք հակառակ ինչ չար ասել բարւոյ։ 51 *Ահաւադիկ ռեբեկայ առաջի քո. ա՛ռ եւ գնա. եւ եղիցի կին որդւոյ Տ՟Ն քոյ՝ ո՟պ եւ խօսեցաւ Տ՟ր։ 52 *Եւ՛ եղեւ իբրեւ լուաւ ծառայն աբրահամու զբանս ն՟ց, երկիր եպագ Տ՟Ն

*Եւ

53 Եւ եհան ծառայն անօթս ոսկւոյ. և անօթս արծաթոյ. և զհանդերձ. և ետ ռեբեկայ. և ետ ընծայս եղբարցն նորա և մօրն: 54 Կերին և արբին նա, և արքն որք ընդ նմա էին. և ննջեցին: Եւ յարուցեալ 'ի վաղորդեայն ասէ՝ ասէ: արձակեցէք զիս զի երթայց առ տէր իմ: 55 Եւ ասեն եղբարքն նր̃ և մայրն. կացցէ կոյսն առ մեզ իբրև աւուրս տասն. և ապա երթիցէ: 56 Եւ նա ասէ ցնս̃. մի խափանէք զիս. զի Տր̃ յաջողեաց զճանապարհ իմ: արձակեցէք զիս զի երթայց առ տէրն իմ: 57 Եւ ասեն եղբարք նորա. կոչեսցուք զաղջիկն, և հարցցուք 'ի բերանոյ նր̃: 58 Կոչեցին զռեբեկայ՝ և ասեն ցնա. երթաս ընդ առնս ընդ այսմիկ. և նա ասէ. երթամ: 59 Եւ յուղարկեցին զռեբեկայ զքոյրն իւրեանց. և զինչս նորա. և զծառայն աբրահամու. և որք ընդ նմայն էին: 60 Եւ օրհնեցին զռեբեկայ՝ և ասեն ցնա. քոյր մեր՝ եղիցիս 'ի հազարս և 'ի բիւրս. և ժառանգեսցէ զաւակ քո զքաղաքս թշնամեաց քոց: 61 Յարուցեալ ռեբեկայ և նաժիշտք իւր ելին յուղտս. և գնացին ընդ առնն. և առեալ ծառայն զռեբեկա՝ գնաց: 62 Եւ ‖ իսահակ յանապատէ անդ առ ջրհորովն տեսլեանն բնակէր յերկրին 'ի կողմն հարաւոյ: 63 Եւ ել իսահակ զբօսնուլ 'ի դաշտին ընդ երեկս. ամբարձ զաչս իւր՝ և ետես, զի գային ուղտք տասն: 64 Ամբարձեալ զաչս իւր ռեբեկայ ետես զիսահակ: էջ վաղվաղակի յուղտոյ անտի: 65 Եւ ասէ ցծառայն. ով է այրն, որ գայ 'ի դաշտին ընդ առաջ մեր: և ասէ ծառայն. նա է տէրն իմ. և նր̃ առեալ զձորձ արկաւ զիւրև: 66 Եւ պատմեաց ծառայն իսահակայ զա̃մ զխօսսն զոր արար: 67 Եւ եմուտ իսահակ 'ի տուն սառայի մօր իւրոյ և էառ զռեբեկայ. և եղև նորա կին. և սիրեաց զնա. և մխիթարեցաւ իսահակ վասն սառայի մօր իւրոյ:

‖ Վեր. 16.14.

## ԳԼ: ԻԵ:

1 Եւ յաւելեալ աբրահամ առնուլ կին որում անուն էր քետուրա: 2 Եւ ‖ ծնաւ նմա զեմրան. և զյեկսան. և զմադան. և զմադիան. և զյեսբոկ. և զսովւէ: 3 Եւ յեկսան ծնաւ զսաբա. և զթեման. և զդադան: և եղեն որդիք դադանայ. ռագուէլ. և նաբդէէլ. և ասուրիմ. և լատուսիմ. և լովոմիմ: 4 Եւ որդիք մադիանու. գեփար. և ափեր. և ենոք. և աբիդա. և եգրագա. ամենեքեան սոքա էին որդիք քետուրայ: 5 Եւ ետ աբրահամ զա̃մ ինչս իւր իսահակայ որդւոյ իւրում: 6 Եւ որդւոց հարճիցն իւրոց, որք էին աբրահամու, ետ աբրահամ պարգևս. և արձակեաց զնս̃ յիսահակայ որդւոյ իւրոյ. մինչ դեռ ինքն կենդանի էր ընդ արևելս. յերկիրն արևելից: 7 Եւ այս են ամք աւուրց կենացն աբրահամու. զորս եկեաց՝ հարիւր և եօթանասուն և հինգ ամ: 8 Եւ պակասեալ աբրահամու մեռաւ 'ի բարւոք ծերութե̃. ալևորեալ և լի աւուրբք. և յաւելաւ առ ժողովուրդ իւր: 9 Եւ թաղեցին զնա իսահակ և իսմայէլ որդիք նորա՝ յայրի անդ 'ի կրկնում. յագարակին եփրոնի որդւոյ սահառայ քետացւոյ. որ է յանդիման մամրէի: 10 ‖ Ագարակն և այրն: զոր ստացաւ աբրահամ յորդւոցն քետայ: անդ թաղեցին զաբրահամ և զսառայ զկին նր̃: 11 Եւ եղև յետ մահուանն աբրահամու, օրհնեաց Ա̃Ծ զիսահակ զորդի նր̃: ‖ և բնակեցաւ իսահակ առ ջրհորի տեսլեան: 12 Եւ այս են ծնունդք իսմայէլի որդւոյ աբրահամու. զոր ծնաւ ագար եգիպտացի աղախին սառայի: 13 Եւ այս են անուանք որդւոյն իսմայէլի. ըստ անուանց ազգացն նր̃. ‖ անդրանիկ իսմայէլի նաբէօթ. և կեդար. և աբդէէլ. և մաբսամ: 14 Եւ մասմա. և իդումա. և մասէ: 15 Եւ քոդդադ. և թեմա. և յետուր. և նափէս. և կեդմա: 16 Սոքա են որդիք իսմայէլի. և այս անուանք են նր̃ 'ի հանդրուանս իւրեանց. և 'ի բանակս իւրեանց. երկոտասան իշխանք նոցա ըստ ազգաց իւրեանց: 17 Եւ այս են ամք կենաց իսմայէլի. հարիւր երեսուն և եօթն ամ. և պակասեալ մեռաւ. և յաւելաւ յազգ իւր: 18 Եւ բնակեցաւ յեւիլայ մինչև ցսուր. որ է յանդիման եգիպտոսի մինչև 'ի գալ յասորեստանեայս. յանդիման ա̃մ եղբարց իւրոց բնակեցաւ: 19 Եւ այս են ծնունդք իսահակայ որդւոյ աբրահամու: աբրահամ ծնաւ զիսահակ: 20 Եւ էր իսահակ ամաց քառասնից յորժամ էառ զռեբեկա զդուստր բաթուէլի ասորւոյ. որ էր 'ի միջագետաց ասորւոց. զքոյր լաբանու ասորւոյ իւր 'ի կնութե̃: 21 Եւ աղաչէր իսահակ զՏր̃ վս̃ ռեբեկայ կնոջ իւրոյ՝ զի ամուլ էր: և լուաւ նմա Ա̃Ծ. և յղացաւ ռեբեկա կին նորա: 22 Եւ խաղացին մանկունքն 'ի նմա: և ասէ՝ եթէ այսպէս

լինիցի

‖ 1. Մն̃ա 1. 32.
‖ Վեր. 23.16.
‖ Վեր. 16.14.
‖ 1. Մն̃ա 1.29.
հադադ.

լինելոց ինձ, ընդէ՞ր իցէ ինձ այս. և գնաց հարցանել ՚ի Տէ։ 23 *Եւ ասէ ցնա Տր. Երկուք ազգք են յորովայնի քում. և երկուք ժողովուրդք յորովայնէ քումմէ զատցին. և ժողովուրդ զժողովրդեամբ ելեւել առնիցէ. և երէցն կրտսերոյն ծառայեսցէ։ 24 *Եւ իբրև լցան նորա աւուրք ծնանելոյ. և էին երկու որդիք յորովայնի նորա։ 25 *Եւ ել որդին անդրանիկ շառագոյն ամենևին իբրև զմորթ թաւ. և անուանեաց զանուն նր եսաւ. Եւ ապա ել եղբայր նր. և ձեռն նորա ունէր զգարշապարէ եսաւայ։ և կոչեաց զանուն նր յակոբ։ 26 *Եւ իսահակ էր ամաց վաթսնից՝ յորժամ ծնաւ զնս ռեբեկա։ և աճեցին մանկունքն։ 27 *Եւ էր եսաւ այր հմուտ որսոյ՝ վայրագ։ և յակոբ այր առանց պաճուճանաց ընդ տուն։ 28 *Եւ սիրէր իսահակ զեսաւ. զի որս նորա կերակուր էր նմա. և ռեբեկա սիրէր զյակոբ։ 29 *Եւ էր եփեալ յակոբայ թան. և եկն եսաւ ՚ի դաշտէ նքթեալ։ 30 *Եւ ասէ եսաւ ցյակոբ. տուր ինձ ճաշակել ՚ի շիկաթանէդ յայդմանէ զի նքթեալ եմ։ վասն այնորիկ կոչեցաւ անուն նր եդոմ։ 31 *Եւ ասէ յակոբ ցեսաւ. վաճառեա ինձ այսօր զանդրանկութիւն քո։ 32 *Եւ ասէ եսաւ. ահաւասիկ ես երթամ ՚ի վախճանիլ. և առ իմ՞ իցեն այն անդրանկութիւնք։ 33 *Եւ ասէ ցնա յակոբ. երդուիր ինձ այսօր։ և երդուաւ նմա. և վաճառեաց եսաւ զանդրանկութիւնս իւր յակոբայ։ 34 *Եւ յակոբ ետ եսաւայ զհաց. և թան ոսպնեայ. եկեր. և էարբ. և յարեաւ գնաց. և անարգեաց եսաւ զանդրանկութիւնն։

Հռով. 9.10. Ովսէ. 12.3. Մաղ. 1.2. Եբր. 12.16.

## ԳԼ։ ԻԶ։

1 Եւ եղև սով յերկրին. թող զառաջին սովն. որ եղև ՚ի ժամանակին աբրահամու. և չոգաւ իսահակ առ աբիմելէք արքայ փղշտացւոց ՚ի գերարայ։ 2 *Եւ երևեցաւ նմա Տր և ասէ. մի իջաներ յեգիպտոս. այլ բնակեա՛ց դու յերկրիդ՝ յորում ասացից քեզ։ 3 *Եւ պանդխտեա՛ց յերկրիս յայսմիկ. և եղէց ընդ քեզ. և օրհնեցից զքեզ. զի քեզ և զաւակի քում տաց զամ երկիրս զայս. և հաստատեցից զերդումն իմ. զոր երդուայ աբրահամու հօր քում։ 4 *Եւ բազմացուցից զզաւակ քո իբրև զաստեղս երկնից. և տաց զաւակի քում զամ զերկիրս զայս. և օրհնեսցին ՚ի զաւակի քում ամ ազգք երկրի։ 5 *Փոխանակ զի լուաւ աբրահամ հայր քո ձայնի իմում. և պահեաց զհրամանս իմ. և զպատուիրանս իմ. և զիրաւունս իմ. և զօրէնս իմ։ 6 *Եւ բնակեցաւ իսահակ ՚ի մէջ գերարացւոց։ 7 *Եւ հարցին արք տեղւոյն զռեբեկայ կնոջէ նր. և ասէ՝ քոյր իմ է։ քանզի երկեաւ ասել թէ կին իմ է. թէ գուցէ սպանիցեն զնա արք տեղւոյն վս ռեբեկայ. զի գեղեցիկ էր երեսօք։ 8 Եւ եղև անդ բազում ժամանակս. և կարկառեալ աբիմելէք արքայ փղշտացւոց ընդ պատուհանն. և ետես զիսահակ զի խաղայր ընդ ռեբեկայ կնոջ իւրում։ 9 *Կոչեաց աբիմելէք զիսահակ՝ և ասէ ցնա. ուրեմն կին քո էր. ընդէ՞ր ասացեր՝ թէ քոյր իմ է։ ասէ ցնա իսահակ, քանզի ասացի՝ թէ գուցէ մեռանիցիմ վս նր։ 10 *Ասէ ցնա աբիմելէք. ընդէ՞ր արարեր զայդ ընդ մեզ. սակաւիկ մի ևս մնայր ուրումն յազգէ իմմէ առ կին քո. և ածէիր ՚ի վերայ մեր անդիտութիւն. և պատուիրեաց աբիմելէք ամ ժողովրդեանն իւրում, և ասէ. 11 *Ամենայն որ հարկանիցէ ընդ այրդ ընդ այդ. կամ ընդ կին դորա, մահու պարտական լիցի։ 12 *Եւ սերմանեաց սերմն իսահակ յերկրին յայնմիկ. և եգիտ ՚ի տարւոջն յայնմիկ հարիւրաւոր զգարին. և օրհնեաց զնա Տր։ 13 *Եւ բարձրացաւ այրն. և երթայր յառաջադէմ. և մեծանայր. մինչև եղև մեծ յոյժ։ 14 *Եւ եղև նր անասուն ոչխարի. և արջառոյ. և արմտիք բազումք։ և նախանձեցան ընդ նմա փղշտացիքն։ 15 *Եւ զամ ջրհորս, զորս փորեցին ծառայք նր ՚ի ժամանակին աբրահամու հօր նր, խցին փղշտացիքն՝ և լցին զնս հողով։ 16 *Եւ ասէ աբիմելէք ցիսահակ. երթ դու ՚ի մէնջ. զի կարի զօրագոյն քան զմեզ եղեր։ 17 *Եւ գնաց անտի իսահակ. և բնակեցաւ ՚ի ձորն գերարացւոց. և անդ բնակեցաւ։ 18 *Եւ դարձեալ իսահակ փորեաց զջրհորսն ջրոց. զորս փորեցին ծառայքն աբրահամու հօր նորա. և խցին զայն փղշտացիքն յետ մահուանն աբրահամու հօր նորա. և եդ նց անուանս ըստ անուանցն՝ զոր անուանեաց նց աբրահամ հայր իւր։ 19 *Եւ փորեցին ծառայքն իսահակայ ՚ի ձորն գերարացւոց. և գտին անդ ջրհոր ջրոյ կենդանւոյ։ 20 *Եւ մարտնչէին հովիւքն գերարացւոց ընդ հովուան իսահակայ. և ասէին՝ թէ իւրեանց իցէ ջրհորն. և կոչեաց զանուն ջրհորոյն զրկութիւն. քանզի զրկեցին զնա։ 21 *Չուեաց

անտի՝

Մեր. 12.7. և 15. 18. Մեր. 12.3. և 18. 18. և 22.18. Մարգ. 28. 14.

անտի՝ և փորեաց միւս ևս ջրհոր ջրոյ. հակառակէին վս՟ այնորիկ ևս ։ և կոչեաց զանուն նորա Թշնամութիւն ։ 22 *Չուեաց անտի՝ փորեաց այլ ջրհոր՝ և ոչ մարտնչէին վս՟ այնր՝ և կոչեաց զանուն նր՟ անդորրութիւն. ասէ՝ զի այժմ ընդարձակեաց մեզ Տր՟. և աճեցոյց զմեզ յերկրի ։ 23 *Եւ ել անտի ՚ի ջրհորն երդման ։ 24 *Եւ երևեցաւ նմա Տր՟ ՚ի գիշերին յայնմիկ՝ և ասէ ։ Ես եմ Ա՟ծ հօր քոյ. մի երկնչիր՝ զի ընդ քեզ եմ. և օրհնեցից զքեզ. և բազմացուցից զզաւակ քո վս՟ աբրահամու հօր քոյ ։ 25 *Եւ շինեաց անդ սեղան. և կարդաց զանուն Տն՟ ։ և էհար անդ զխորան իւր ։ փորեցին ծառայքն իսահակայ անդ ջրհոր ։ 26 *Եւ աբիմելէք չոգաւ առ նա ՚ի գերարայ. և ոքոզաթ տաձարապետ նորա. և փիքող սպարապետ զօրաց նր՟ ։ 27 *Եւ ասէ ցնոսա իսահակ. զի՞ եկիք առ իս. զի դուք ատեցիք զիս՝ և հալածեցիք ՚ի ձէնջ ։ 28 *Եւ ասեն. տեսանելով տեսաք՝ զի էր Տէր ընդ քեզ. և ասեմք՝ եղիցի դաշն ընդ միմեանս, ընդ մեզ և ընդ քեզ. և դիցուք ընդ քեզ ուխտ ։ 29 *Չառնել ինչ մեզ չար. որպէս և մեք ոչինչ մեղաք քեզ. և զոր օրինակ արարաք քեզ բարի՝ և արձակեցաք զքեզ խաղաղութբ՟. և արդ դու օրհնեալ ՚ի Տէ՟ ես ։ 30 *Եւ արար նց՟ խրախութիւն. կերին և արբին ։ 31 *Եւ յարուցեալ ՚ի վաղիւն անդր երդուան այր ընկերի իւրում. և արձակեաց զնոսա իսահակ. և գնացին ՚ի նմանէ ողջութբ՟ ։ 32 *Եւ եղև յաւուր յայնմիկ. եկին ծառայքն իսահակայ՝ և պատմեցին նմա վս՟ ջրհորոյն, զոր փորեցին՝ թէ գտաք ջուր ։ 33 *Եւ կոչեաց զնա երդումն ։ վասն այնորիկ է անուն քաղաքին այնմիկ ջրհոր երդման. մինչև ցայսօր ժամանակի ։ 34 *Եւ էր եսաւ ամաց քառասնից. և էառ իւր կին զյուդիթ դուստր բէերայ քետացւոյ. և զմասեմա դուստր ելոմայ խևացւոյ ։ 35 *‖ Եւ դառնացուցանէին զիսահակ և զռեբեկա ։

‖ Ս՟ պր. 27.46.

## ԳԼ. ԻԷ.

1 Եւ եղև իբրև ծերացաւ իսահակ. և վատեցան աչք նորա ՚ի տեսանելոյ. կոչեաց զեսաւ զորդի իւր զերէց՝ և ասէ ցնա. որդեակ իմ. և նա ասէ ցնա. ահաւասիկ ես ։ 2 *Եւ նա ասէ ցնա. ահաւասիկ ես ծերացեալ եմ. և ոչ գիտեմ զօր վախճանի իմոյ. 3 *Արդ առ դու զգործի քո զաղեղն և զկապարճս. և ել ՚ի դաշտին. և որսա ինձ 4 որս ։ *Եւ արա ինձ խորտիկս որպէս և ես սիրեմ. և բեր՝ մատո ինձ՝ զի կերից. և օրհնեսցէ զքեզ անձն իմ, 5 մինչչև մեռեալ իցեմ ։ *Եւ լուաւ ռեբեկա զի խօսէր ընդ որդւոյ իւրում. գնաց եսաւ ՚ի դաշտ որսալ որս 6 հօր իւրում ։ *Եւ խօսեցաւ ռեբեկա ընդ յակոբայ որդւոյ իւրում՝ և ասէ ։ ահա լուայ ես ՚ի հօրէ քումմէ. զի խօսէր ընդ եղբօր քում՝ և ասէր ։ 7 *Բեր ինձ որս. և արա ինձ խորտիկս. զի կերից՝ և օրհնեցից զքեզ առաջի 8 Տն՟ մինչչև մեռեալ իցեմ ։ *Եւ արդ որդեակ իմ լուր ինձ՝ որպէս ես պատուիրեմ քեզ ։ 9 *Գնա դու ՚ի դաշտն. և առ ինձ անտի երկուս ուլս փափուկս և ընտիրս. և արարից զնս՟ խորտիկս 10 հօր քում որպէս և սիրէ ։ *Եւ մատուսցես հօր քում՝ և կերիցէ. զի օրհնեսցէ զքեզ հայրն քո՝ մինչչև մեռեալ իցէ ։ 11 *Եւ ասէ յակոբ ցռեբեկա մայր իւր. եղբայր իմ եսաւ այր թաւ է. և ես 12 լերկ ։ *Գուցէ շօշափիցէ զիս հայր իմ. և լինիցիմ առաջի նորա իբրև արհամարհող. և ածիցեմ ՚ի վերայ 13 իմ անէծս և ոչ օրհնութի՟ ։ *Եւ ասէ ցնա մայրն իւր. յիմ վերայ անէծքն այն որդեակ. բայց միայն լուր ձայնի 14 իմում՝ և երթ՝ և ած ինձ ։ *Գնաց՝ և էառ՝ և եած մօր իւրում ։ և արար խորտիկս՝ որպէս և սիրէր հայր նորա ։ 15 *Եւ առեալ ռեբեկայ զպատմուճանն զագնիւ որդւոյ իւրոյ երիցու. որ կայր առ նմա ՚ի տանն. զգեցոյց յակոբայ 16 որդւոյ իւրում կրտսերոյ ։ *Եւ զուլենիսն այծեաց ՚ի բազուկս նր՟. և ՚ի վր՟ 17 մերկոյ պարանոցի նորա ։ *Եւ ետ զխորտիկսն և զհացն, զոր արար՝ ՚ի ձեռս 18 յակոբայ որդւոյ իւրոյ ։ *Եւ տարաւ հօր իւրում ։ և ասէ՝ հայր իմ ։ և նա ասէ՝ ահաւասիկ եմ ։ և ասէ. ո՞վ ես դու 19 որդեակ ։ *Եւ ասէ յակոբ ցհայրն. ես եմ եսաւ անդրանիկն քո. արարի՝ որպէս և խօսեցար ընդ իս. արի՝ նիստ՝ և կեր յորսոյ իմմէ. զի օրհնեսցէ զիս 20 անձն քո ։ *Եւ ասէ իսահակ ցորդին իւր. զի՞ է զի վաղվաղակի գտեր որդեակ ։ և նա ասէ՝ որպէս պատրաս21 տեաց Տր՟ Ա՟ծ առաջի իմ ։ *Եւ ասէ իսահակ ցյակոբ. մօտ եկ՝ և շօշափեցից զքեզ որդեակ. եթէ դու իցես 22 որդի իմ եսաւ՝ թէ ոչ ։ *Մատեաւ յակոբ առ իսահակ հայր իւր. և շօշափեաց զնա և ասէ. ձայնդ ձայն յակոբայ. և ձեռքդ ձեռք եսաւայ ։ 23 *Եւ ոչ ծանեաւ զնա. զի էին ձեռք նորա իբրև զձեռսն եսաւայ եղբօր 24 իւրոյ թաւ ։ և օրհնեաց զնա ։ *Եւ ասէ՝

ասէ՝ դու ես որդի իմ Եսաւ ։ Եւ նա ասէ՝ ես եմ ։ 25 *Եւ ասէ՝ մատո ինձ՝ և կերից յորսոյ քումմէ որդեակ․ զի օրհնեսցէ զքեզ անձն իմ ։ եւ մատոյց նմա և եկեր ․ և եբեր նմա գինի և էարբ ։ 26 *Եւ ասէ ցնա Իսահակ հայր իւր․ մօտ եկ․ և համբուրեա զիս որդեակ ։



27 *Եւ մատեաւ, համբուրեաց զնա ․ և էառ զհոտ հանդերձից նորա ․ և օրհնեաց զնա և ասէ ։ ահա հոտ որդւոյ իմոյ իբրև զհոտ անդոյ լիոյ․ զոր օրհնեաց Տր ։ 28 *Եւ ‖ տացէ քեզ Ած 'ի ցօղոյ երկնից՝ և 'ի պարարտութենէ երկրի․ և բազմութիւն ցորենոյ և գինւոյ ։ 29 *Եւ ծառայեսցեն քեզ ազգք․ և երկիր պագցեն քեզ իշխանք ․ և եղիցիս տէր եղբօր քում․ և երկիր պագցեն քեզ՝ որդիք հօր քոյ․ որ անիծանիցէ զքեզ՝ անիծեալ լիցի ․ և որ օրհնիցէ զքեզ՝ օրհնեալ ։ 30 *Եւ եղև յետ դադարելոյն Իսահակայ յօրհնելոյ անտի զՅակոբ զորդի իւր․ իբրև ել Յակոբ յերեսաց Իսահակայ հօր իւրոյ․ և եկն Եսաւ եղբայր նորա յորսոյ ։ 31 *Արար և նա խորտիկս՝ և մատոյց հօր իւրում․ և ասէ ցհայր իւր ․ յարիցէ հայր իմ․ և կերիցէ յորսոյ որդւոյ իւրոյ ․ զի օրհնեսցէ զիս անձն քո ։ 32 *Եւ ասէ ցնա Իսահակ հայր իւր․ ո՞վ ես դու ։ Եւ նա ասէ ․ ես եմ որդի քո անդրանիկ Եսաւ ։ 33 *Եւ զարմացաւ Իսահակ զարմացումն մեծ յոյժ․ և ասէ իսկ այն ո՞վ է՝ որ որսացաւ ինձ որս՝ և եբեր մատոյց ․ և կերի յամենայնէ մինչև քո եկեալ էր․ և օրհնեցի զնա․ և եղիցի օրհնեալ ։ 34 *Եւ եղև իբրև լուաւ Եսաւ զբանս Իսահակայ հօր իւրոյ․ աղաղակեաց 'ի ձայն մեծ դառնացեալ յոյժ ․ և ասէ ցհայրն իւր ․ օրհնեա արդ և զիս հայր ։ 35 *Եւ ասէ ցնա․ եկն եղբայր քո նենգութեամբ․ և էառ զօրհնութիւնս քո ։ 36 *Եւ նա ասէ ։ յիրաւի կոչեցաւ անուն նորա Յակոբ ․ զի այս երկիցս խաբեաց զիս․ ‖ էառ զանդրանկութիւնն իմ․ և արդ էառ զօրհնութիւնս իմ ։ և ասէ Եսաւ ցհայր իւր ․ և ո՞չ մի ինչ օրհնութիւն թողեր ինձ հայր ։ 37 *Պատասխանի ետ Իսահակ՝ և ասէ ցԵսաւ ․ որովհետև տէր արարի զնա քեզ․ և զամ եղբարս նորա արարի նմա ծառայս․ ցորենով և գինւով հաստատեցի զնա ․ քեզ զինչ արարից որդեակ ։ 38 *Ասէ Եսաւ ցհայրն իւր՝ միթէ մի՞ օրհնութիւն իցէ քո հայր․ օրհնեա և զիս հայր ։ և իբրև ստրջացաւ Իսահակ ․ ամբարձ զձայն իւր Եսաւ՝ և ելաց ։ 39 *Պատասխանի ետ Իսահակ հայրն՝ և ասէ ցնա․ ահա ‖ 'ի պարարտութենէ երկրի եղիցի բնակութիւն քո ․ և 'ի ցօղոյ երկնից 'ի վերուստ եղիցի օրհնութիւն քո ։ 40 *Եւ սրով քով կեցցես․ և եղբօր քում ծառայեսցես ․ և եղիցի յորժամ քակեսցես՝ և լուծցես զլուծ նորա 'ի պարանոցէ քումմէ ։ 41 *Եւ ոխացեր Եսաւ ընդ Յակոբայ վն օրհնութեանն՝ զոր օրհնեաց զնա հայր իւր ․ և ասէր Եսաւ 'ի միտ իւրում․ ‖ մերձեսցին աւուրք կական հօր իմոյ ․ զի սպանից զՅակոբ զեղբայր իմ ․ 42 *Ազդ եղեն Ռեբեկայ բանքն Եսաւայ որդւոյ իւրոյ երիցու ։ և յղեաց կոչեաց զորդի իւր զկրտսեր զՅակոբ՝ և ասէ ցնա․ ահա Եսաւ եղբայր քո սպառնայ սպանանել զքեզ ։ 43 *Արդ լուր որդեակ ձայնի իմում․ և արի գնա 'ի Միջագետս առ Լաբան եղբայր իմ 'ի Խառան ։ 44 *Եւ բնակեսցես ընդ նմա աւուրս բազում․ մինչև անցցէ սրտմտութիւն բարկութեան եղբօր քոյ 'ի քէն ։ 45 *Եւ մոռասցի՝ զոր ինչ արարեր նմա․ և ապա առաքեցից և կոչեցից զքեզ անտի․ գուցէ անզաւակեցայց յերկոցունց 'ի ձէնջ 'ի միում աւուր ։ 46 *Եւ ասէ Ռեբեկա ցԻսահակ․ ‖ ձանձրացեալ է անձն իմ 'ի դստերաց որդւոց Քետայ․ եթէ առնուցու Յակոբ կին 'ի դստերաց անտի Քետայ․ 'ի դստերաց երկրիս այսորիկ․ և ընդէ՞ր իցէ ինձ կեալ ։

‖ Եբրայ․ 11․ 20․

‖ Ծն․ 25․34․

‖ Եբրայ․ 11․20․

‖ Աբդ․ 1․10․

‖ Ծն․ 26․35․

## ԳԼ: ԻԸ:

Կոչեաց առ ինքն Իսահակ զՅակոբ՝ 1 օրհնեաց զնա. և պատուիրեաց նմա՝ և ասէ. մի՛ առնուցուս կին ՚ի դստերաց աստի Քանանացւոց: * Ել 2 արի՛ և գնա ՚ի Միջագետս Ասորւոց. ՚ի տուն Բաթուէլի հօր մօր քո. և ա՛ռ անտի քեզ կին ՚ի դստերաց Լաբանու եղբօր մօր քո: * Եւ Ա̃Ծ իմ օրհնեսցէ 3 զքեզ. և աճեցուսցէ զքեզ. և բազմացուսցէ զքեզ. և եղիցիս ՚ի ժողովս ազգաց: * Եւ տացէ քեզ զօրհ- 4 նութիւն Աբրահամու հօր իմոյ. քեզ և զաւակի քում յետ քո. ժառանգել քեզ զերկիր պանդխտութե̃ քո՝ զոր ետ Ա̃Ծ Աբրահամու: ‖ * Եւ արձա- 5 կեաց Իսահակ զՅակոբ՝ և գնաց ՚ի Միջագետս Ասորւոց. առ Լաբան որդի Բաթուէլի Ասորւոյ եղբօր Ռեբեկայ. մօր Յակոբայ և Եսաւայ: * Եւ 6 իբրև ետես Եսաւ եթէ օրհնեաց Իսահակ զՅակոբ՝ և գնաց ՚ի Միջագետս Ասորւոց առնուլ իւր անտի կին. և յօրհնելն զնա պատուիրեաց՝ և ասէ. մի՛ առնուցուս կին ՚ի դստերաց աստի Քանանացւոց: * Եւ ունկն դիր Յակոբ 7 հօր իւրում. և գնաց ՚ի Միջագետս Ասորւոց: * Եւ ետես Եսաւ 8 եթէ չար թուին դստերք Քանանացւոցն առաջի Իսահակայ հօր իւրոյ: * Գնաց Եսաւ առ Իսմայէլ. և էառ 9 զՄայելէթ դուստր Իսմայէլի որդւոյ Աբրահամու՝ զքոյր Նաբէութայ, ՚ի վ̃ր այլոց կանանց իւրոց՝ իւր կնու̃է: * Եւ ել Յակոբ ՚ի Ջրհորոյ անտի երդ- 10 ման. և գնաց ՚ի Խառան: * Եւ էհաս 11 ՚ի տեղի մի և ննջեաց անդ. զի արև ՚ի մուտս էր. և էառ ՚ի քարանց տեղւոյն. և եդ ընդ սնարս իւր: և ննջեաց ՚ի տեղւոջն յայնմ: * Եւ ետես տեսիլ: 12 և ահա սանդուղք հաստատեալ յերկրի. որոյ գլուխն հասանէր յերկինս: և հրեշտակք Ա̃Յ ելանէին և իջանէին ընդ նա: * Եւ Տ̃Ր հաստատեալ 13 կայր ՚ի նմա: և ասէ. ‖ Ես եմ Տ̃Ր Ա̃Ծ Աբրահամու հօր քոյ, և Ա̃Ծ Իսահակայ. մի՛ երկնչիր. զի զերկիրդ յորում դու դ ննջեցեր, քեզ տաց զդա. և զաւակի քում: * Եւ եղիցի զաւակ քո 14 իբրև զաւազ երկրի. ‖ և ընդարձակեսցի ՚ի ծովակողմն. և ընդ արևելս. և ընդ հիւսիս. և ընդ հարաւ ‖ և օրհնեսցին ՚ի քեզ ա̃մ ազգք երկրի՝ և ՚ի զաւակի քում: * Եւ ես աւասիկ 15 ընդ քեզ եմ պահել զքեզ յա̃մ ճանապարհս քո՝ յոր գնասցես. և դարձուցից զքեզ յերկիրս յայս. զի ոչ թողից զքեզ մինչև արարից զա̃մ ինչ զոր խօսեցայ ընդ քեզ: * Եւ զարթեաւ 16 Յակոբ ՚ի քնոյ անտի իւրմէ՝ և ասէ. Տ̃Ր է ՚ի տեղւոջս յայսմիկ. և ես ոչ գիտէի: * Զահի հարաւ՝ և ասէ. 17 ահեղ իմն է տեղիս այս. և ո՛չ է աս եթէ ոչ տուն Ա̃Յ. և այս է դուռն երկնից: * Եւ յարեաւ Յակոբ ընդ 18 առաւօտն. և էառ զվէմն զոր եդ ընդ սնարս իւր. և կանգնեաց զնա արձան. ‖ և եհարկ իւղ ՚ի գլուխ նո̃: * Եւ կո- 19 չեաց Յակոբ զանուն տեղւոյն այնո- րիկ տուն Ա̃Յ. և յառաջ անուն էր քաղաքին այնորիկ Լոմաճուս: * Եւ 20 ուխտեաց Յակոբ ուխտ՝ և ասէ. եթէ եղիցի Տ̃Ր Ա̃Ծ ընդ իս. և պահեսցուսցէ զիս ՚ի ճանապարհիս յայսմիկ. զոր ես երթամ. և տացէ ինձ հաց ուտելոյ և հանդերձ զգենլոյ: * Եւ դարձուսցէ 21 զիս ողջութե̃ ՚ի տուն հօր իմոյ. և եղիցի ինձ Տ̃Ր յԱ̃Ծ: * Եւ վէմս, զոր 22 կանգնեցի արձան, եղիցի ինձ տուն Ա̃Յ. և յամենայնէ զոր տացես ինձ, տաց քեզ տասանորդս:

[Margin: Ովսէ. 12. 12. — Վայր. 35. 1. և 48. 3. — Վ2. Օրէ. 12. 20. և 19. 8. և 14. — Վեր. 26. 4. — Վայր. 31. 13. — Լուզա:]



## ԳԼ: ԻԹ:

Եւ զոտս իւր ամբարձեալ Յակո- 1 բայ գնաց յերկիրն արևելից, առ Լաբան՝ որդի Բաթուէլի Ասորւոյ. եղբայր Ռեբեկայ՝ մօր Յակոբայ և Եսաւայ: * Եւ հայեցաւ՝ և ահա ջրհոր 2 մի ՚ի դաշտի անդ. և էին անդ երեք

հօտք

հօտք խաշանց՝ մակաղեալք 'ի նմա. և 'ի ջրհորոյն յայնմանէ արբուցանէին զխաշինսն։ և վէմ մի մեծ կայր 'ի վերայ բերանոյ ջրհորոյն ։ 3 *Եւ անդր ժողովէին ամ՟ հօտք. և թաւալէին զվէմն 'ի բերանոյ ջրհորոյն՝ և տային ջուր խաշանցն. և կափուցանէին զվէմն 'ի բերան ջրհորոյն՝ անդրէն 'ի տեղի իւր ։ 4 *Եւ ասէ ցնոսա յակոբ. եղբարք ուստի՞ էք դուք։ և նոքա ասեն. 'ի խառանէ եմք։ 5 *Ասէ ցնոսա. գիտէ՞ք դուք զլաբան զորդի նաքովրայ։ և նոքա ասեն՝ գիտեմք։ 6 *Ասէ ցնոսա. ո՞ղջ իցէ։ և նոքա ասեն ողջ է. և ահա ռաքէլ դուստր նորա գայ ընդ խաշինսն։ 7 *Եւ ասէ յակոբ. դեռ օր շատ կայ. չև ևս է ժամ խաշանցդ ժողովելոյ. արբուցէք խաշանցդ, և երթայք արածեցէք։ 8 *Եւ նոքա ասեն. չէ հնար՝ մինչ ոչ ժողովիցին ամենայն հովիւք. և թաւալիցեն զվէմդ 'ի բերանոյ ջրհորոյն. և արբուցանիցեմք խաշանցս։ 9 *Մինչ դեռ նա ընդ նոսա խօսէր. ահա ռաքէլ դուստր լաբանու գայր ընդ խաշինս հօր իւրոյ. քանզի նա արածէր զխաշինս հօր իւրոյ։ 10 *Եւ եղև իբրև ետես յակոբ զռաքէլ դուստր լաբանայ եղբօր մօր իւրոյ. և զխաշինս լաբանու եղբօր մօր իւրոյ ։ և մատուցեալ յակոբ թաւալեցոյց զվէմն 'ի բերանոյ ջրհորոյն. և արբոյց խաշանցն լաբանու եղբօր մօր իւրոյ։ 11 *Եւ համբուրեաց յակոբ զռաքէլ. և ձայն եբարձ՝ և ելաց ։ 12 *Եւ պատմեաց յակոբ ռաքելայ. եթէ եղբայր հօր նորա է. և որդի ռեբեկայ է. ընթացեալ պատմեաց հօր իւրում ըստ բանիցս այսոցիկ ։ 13 *Եւ եղև իբրև լուաւ լաբան զանուն յակոբայ որդւոյ քեռ իւրոյ. ընթացաւ ընդ առաջ նր. գրկս էարկ և համբուրեաց զնա. և տարաւ զնա 'ի տուն իւր ։ և պատմեաց լաբանու զամենայն զբանս զայսոսիկ ։ 14 *Եւ ասէ ցնա լաբան. յոսկերացս իմոց, և 'ի մարմնոյս իմոյ ես դու. և էր ընդ նմա ամսօրեայ մի ժամանակ ։ 15 *Եւ ասէ լաբան ցյակոբ. զի եղբայր իմ ես դու. ոչ ծառայեսցես ինձ ձրի. յայտ արա ինձ. զինչ իցեն վարձք քո ։ 16 *Եւ լաբանայ էին երկու դստերք. անուն երիցուն լիա. և անուն կրտսերոյն ռաքէլ ։ 17 *Եւ աչք լիայի դիձագոյնք. բայց ռաքէլ բարի էր տեսլեամբ և գեղեցիկ երեսօք ։ 18 *Եւ սիրեաց յակոբ զռաքէլ ։ և ասէ՝ ծառայեցից քեզ եօթն ամ վասն ռաքելայ դստեր քոյ



կրտսերոյ ։ 19 *Եւ ասէ ցնա լաբան. լաւ իցէ քեզ տալ զնա՝ քան տալ առն օտարի. բնակեա՛ց դու ընդ իս ։ 20 *Եւ ծառայեաց յակոբ վն. ռաքելայ ամս եօթն. և էին յաչս նր. իբրև աւուրք սակաւք. քանզի սիրէր զնա ։ 21 *Եւ ասէ յակոբ ցլաբան՝ տո՛ւր ինձ զկին իմ. լցեալ են աւուրքս. զի մտից առ նա ։ 22 *Եւ ժողովեաց լաբան զամ՟ արս տեղւոյն. և արար հարսանիս ։ 23 *Եւ եղև երեկոյ ։ առեալ լաբանու զլիա դուստր իւր տարաւ առ յակոբ. և եմուտ առ նա յակոբ ։ 24 *Եւ ետ լաբան զզեղփայ զաղախին իւր նաժիշտ դստեր իւրում լիայ ։ և իբրև այգ 25 եղև. և ահա լիա էր ։ *Եւ ասէ յակոբ ցլաբան. զի՞նչ գործեցեր զայս. ոչ վն. ռաքելի ծառայեցի քեզ. ընդէ՞ր 26 խաբեցեր զիս ։ *Ասէ լաբան. չէ՛ն օրէնք յաշխարհի մերում տալ նախ 27 զկրտսերն քան զերէցն ։ *Արդ կատարեա՛ եօթն և ամ ընդ նորա. տաց քեզ և զնա՝ փոխանակ վաստակոցն. զոր վաստակեսցես ինձ զեօթն ամ 28 և այլ ։ *Արար այնպէս յակոբ. և կատարեաց եօթն և ամ ընդ նորա. և ետ նմա լաբան զռաքէլ դուստր 29 իւր 'ի կնութիւն ։ *Եւ ետ լաբան ռաքէլի դստեր իւրում զբաղղայ զաղախին 30 իւր նաժիշտ ։ *Եւ եմուտ առ ռաքէլ. և սիրեաց զռաքէլ քան զլիա. և ծառայեաց նմա այլևս եօթն ամ ։ 31 *Իբրև ետես Տր. եթէ ատելի է լիա. եբաց զարգանդ նորա. բայց ռաքէլ 32 ամուլ էր ։ *Եւ յղացաւ լիա. և ծնաւ որդի յակոբայ. և կոչեաց զանուն նր. ռուբէն. ասէ՝ զի ետես Տր. զտառապանս իմ. արդ սիրեսցէ զիս այր 33 իմ ։ *Յղացաւ դարձեալ լիա՝ և ծնաւ երկրորդ որդի յակոբայ ։ և ասէ՝ զի լուաւ Տէր եթէ ատեցեալ եմ. և յաւել ինձ զսա. և կոչեաց զանուն 34 նորա շմաւօն ։ *Եւ յղացաւ՝ և ծնաւ որդի. և ասէ. արդ առ իս եղիցի այր իմ, զի ծնայ նմա երիս որդիս. վասն այնորիկ կոչեաց զանուն նորա ղևի ։ 35 *Եւ յղացաւ դարձեալ՝ և ծնաւ որդի. և ասէ. զայս միւսանգամ գոհացայց զՏէ ։ ‖ և կոչեաց զանուն նորա ‖ յուդայ ։ և եկաց 'ի ծննդոց ։

Մատ. 1. 2.

## ԳԼ. Լ.

1 Իբրև ետես ռաքէլ՝ եթէ ոչ ծնաւ որդի յակոբայ. նախանձեցաւ ռաքէլ ընդ քեռն իւրում. և ասէ ցյակոբ. տո՛ւր ինձ որդիս. ապա թէ 2 ոչ՝ մեռանիմ ։ *Բարկացաւ յակոբ ռաքելայ՝ և ասէ ցնա. միթէ փոխան

Ա՟Ծ իցեմ ես. որ արգել զպտուղ որովայնի քո ։ * 3 Եւ ասէ ռաքէլ ցյակոբ. ահաւասիկ աղախին իմ բաղղա. մուտ առ նա՝ և ծնցի ՚ի վերայ ծնգաց իմոց. և արարից ես որդիս ՚ի նմանէ ։ * 4 Եւ ետ նմա զբաղղա զաղախին իւր կնութեան ։ Եմուտ առ նա յակոբ ։ * 5 Եւ յղացաւ բաղղա նաժիշտ ռաքելայ. և ծնաւ որդի յակոբայ ։ * 6 Եւ ասէ ռաքէլ. իրաւ արար ինձ Ա՟Ծ. և լուաւ ձայնի իմում և ետ ինձ որդի. վ՟ն այնորիկ կոչեաց զանուն նորա դան ։ * 7 Եւ յղացաւ դարձեալ բաղղա նաժիշտն ռաքելի. և ծնաւ որդի երկրորդ յակոբայ ։ * 8 Եւ ասէ ռաքէլ. օգնեաց ինձ Ա՟Ծ. զի գումարեցայ ընդ քեռ իմում. և յաղթեցի. և կոչեաց զանուն ն՟ր նեփթաղիմ ։ * 9 Իբրև ետես լիա եթէ եկաց ՚ի ծննդենէ, էառ զզելփայ զնաժիշտ իւր. և ետ յակոբայ կնութեան ։ * 10 Յղացաւ զելփայ նաժիշտն լիայ. և ծնաւ զորդի յակոբայ ։ * 11 Եւ ասէ լիա, առ իս բախտ իմ. և անուանեաց զանուն ն՟ր գադ ։ * 12 Յղացաւ զելփա նաժիշտն լիայ. և ծնաւ որդի երկրորդ յակոբայ ։ * 13 Եւ ասէ լիա. երանելի եմ ես. զի երանեսցեն զիս կանայք. և կոչեաց զանուն նորա ասեր. որ է մեծութիւն ։ * 14 Գնաց ռուբէն յաւուրս հնձոց ցորենոյ. և եգիտ խնծորս մանրագորաց յանդի. և եբեր զայն առ լիա մայր իւր. ասէ ռաքէլ ցլիա քոյր իւր. տուր ինձ ՚ի մանրագորաց որդւոյ քո ։ * 15 Եւ ասէ լիա. ոչ իցէ քեզ շատ. զի առեր զայր իմ. մի թէ և զմանրագորս որդւոյ իմոյ առնուցուս ։ Եւ ասէ ռաքէլ՝ ոչ այդպէս է. ննջեսցէ ընդ քեզ զայս գիշեր. փոխանակ մանրագորաց որդւոյ քո ։ * 16 Եւ իբրև եմուտ յակոբ յանդէ ընդ երեկս. ել լիա ընդ առաջ ն՟ր. և ասէ՝ առ իս մտցես այսօր. քանզի ՚ի վարձու կալայ զքեզ. փոխանակ մանրագորաց որդւոյ իմոյ ։ Եւ ննջեաց ընդ նմա զայն գիշեր ։ * 17 Եւ լուաւ Ա՟Ծ լիայ ։ յղացաւ՝ և ծնաւ յակոբայ որդի հինգերորդ ։ * 18 Եւ ասէ լիա. ետ ինձ Ա՟Ծ զվարձս իմ. փոխանակ զի ետու զաղախին իմ առն իմում. և կոչեաց զանուն նորա իսաքար, որ է վարձ ։ * 19 Եւ յղացաւ միւսանգամ լիա. և ծնաւ որդի վեցերորդ յակոբայ ։ * 20 Եւ ասէ լիա ։ պարգևեաց ինձ Ա՟Ծ պարգև բարի. յայսմհետէ սիրեսցէ զիս այր իմ. զի ծնայ նմա որդիս վեց. և կոչեաց զանուն ն՟ր զաբուղոն ։ * 21 Եւ յետ այնորիկ ծնաւ դուստր. և կոչեաց զանուն նորա դինա ։

* 22 Եւ յիշեաց Ա՟Ծ զռաքէլ. և լուաւ նմա Ա՟Ծ. և եբաց զարգանդ նորա ։ * 23 Եւ յղացաւ՝ և ծնաւ որդի յակոբայ. և ասէ ռաքէլ. էհան յինէն Ա՟Ծ զնախատինս իմ ։ * 24 Եւ կոչեաց զանուն ն՟ր յովսէփ. ասէ՝ յաւելցէ ինձ Ա՟Ծ որդի միւս ևս ։ * 25 Եւ եղև իբրև ծնաւ ռաքէլ զյովսէփ, ասէ յակոբ ցլաբան. արձակեա՛ զիս զի երթայց ՚ի տեղի իմ. և յերկիր իմ ։ * 26 Եւ տո՛ւր զկանայս և զմանկունս իմ. վ՟ն որոց ծառայեցի քեզ՝ զի գնացից. զի դու ինքնին իսկ գիտես զծառայութիւն. զոր ծառայեցի քեզ ։ * 27 Ասէ ցնա լաբան. եթէ գտի շնորհս առաջի քո. հմայեցի զի օրհնեաց զիս Ա՟Ծ յոտին քում ։ * 28 Եւ ասէ. յա՛յտ արա զվարձս քո յինէն՝ և տաց ։ * 29 Ասէ ցնա յակոբ. դու գիտես որչափ ինչ ծառայեցի քեզ. և որչափ խաշն էր քո առ իս. սակաւիկ ինչ էր յառաջ քան զիս ։ * 30 Եւ աճեաց ՚ի բազմութիւն. և օրհնեաց զքեզ Տ՟Ր Ա՟Ծ յոտին իմում. և արդ՝ ես երբ առնիցեմ ինձ տուն ։ * 31 Եւ ասէ ցնա լաբան. զի՞նչ տաց քեզ ։ Եւ ասէ ցնա յակոբ՝ մի՛ ինչ տար ինձ ։ բայց զայս և եթ բան արասցես ինձ ։ դարձեալ արածեցից զխաշինս քո՝ և պահեցից ։ * 32 Անցցեն այսօր ա՟մ խաշինքդ առաջի քո. և զատո՛ ՚ի միջի միանից զամենայն ոչխար զխայտախարիւ և զգորշ. և զամենայն զօտարականս զհամակ յօդեաց. և ա՟մ խայտախարիւն և պիսակն յայծեաց եղիցին վարձք իմ ։ * 33 Եւ երևեսցի արդարութիւն իմ ՚ի վաղիւ անդր՝ թէ գա՛ն իմ վարձք առաջի քո. ա՟մ որ ոչ իցէ խայտ և պիսակ յայծեաց. և գորշախայտ յօդեաց, ՚ի գողունս համարեալ լիցի ինձ ։ * 34 Եւ ասէ ցնա լաբան՝ եղիցի ըստ բանի քում ։ * 35 Եւ զատոյց յաւուր յայնմիկ զքաղս կապուտս. և զպիսակս. և զա՟մ այծս կապուտս. և զամենայն սպիտակս ՚ի նոցանէ. զպիսակս և զա՟մ զհամակս յօդեաց. ետ ՚ի ձեռս որդւոյն իւրոց ։ * 36 Եւ մեկնեցոյց ճանապարհ երից աւուրց՝ ընդ մէջ նոցա և ընդ մէջ յակոբայ. և յակոբ արածէր զխաշինսն լաբանու զմնացեալս. * 37 Եւ էառ յակոբ գաւազան շերտ դալար ընկուզի և սօսւոյ. և կեղևեաց զն՟ա յակոբ. և եղև սպիտակ. և էքերծ զդալարն ՚ի գաւազանացն անտի. և երևէր ՚ի գաւազանսն սպիտակն. զոր քերծոյրն՝ նկարէին ։ * 38 Եւ դնէր ըզ գաւազանսն՝ զոր քերծոյր՝ յաւազանս ջրարբից ջրոյն. զի իբրև գայցեն խաշինքն ըմպել ջուր, հանդէպ գաւազա-

զա-

զանացն, զկծիցին յորժամ գայցեն ըմպել ջուր: 39 *Եւ զկծէին խաշինքն ՚ի գաւազանսն. և ծնանէին խաշինքն գորշախայտս. և պիսակս. և խայտախարիկս: 40 *Եւ զորոջսն ուրոյն զատանէր յակոբ. և կացուցանէր յանդիման մաքեացն. և զխոյ կապոյտ. և զամենայն գորշախայտն օդեաց. և զատանէր իւր հօտս առանձինն: և ոչ խառնէր զնոսա ՚ի խաշինս լաբանու: 41 *Եւ լինէր յորժամ զկծէին խաշինքն ՚ի խառնսն և յղանային, դնէր յակոբ զգաւազանսն յանդիման խաշանցն յաւազանսն. առ ՚ի զկծելոյ նոցա ըստ գաւազանացն: 42 *Եւ յորժամ ծնանէին խաշինքն՝ ոչ դնէր: և լինէր աննշանն լաբանու. և նշանաւորն յակոբայ: 43 *Եւ մեծացաւ այրն յոյժ յոյժ. և եղև նորա ոչխար և արջառ յոյժ. և ծառայք՝ և աղախնայք. ուղտք՝ և էշք:

## ԳԼ. ԼԱ.

Եւ լուաւ յակոբ զբանս որդւոցն լաբանու՝ զի ասէին. եթէ էառ յակոբ զա̃մ ինչս հօր մերոյ. և ՚ի հօր մերոյ ընչից արար իւր զայն ամենայն փառս: 2 *Եւ ետես յակոբ զերեսս լաբանու. և ահա ոչ էին ընդ նմա իբրև յերեկն և յեռանդն: 3 *Եւ ասէ Տ̃ր Ա̃Ծ ցյակոբ. դարձիր յերկիր հօր քոյ՝ և յազգ քո. և եղէց ընդ քեզ: 4 *Եւ յղեաց յակոբ. և կոչեաց զռաքէլ և զլիա ՚ի դաշտ անդր ուր խաշինքն էին: 5 *Եւ ասէ ցնոսա. տեսանեմ ես զերեսս հօր ձերոյ, զի ոչ են ընդ իս որպէս յերեկն և յեռանդ: և Ա̃Ծ հօր իմոյ էր ընդ իս: 6 *Եւ դուք ինքնին գիտէք. զի յամենայն զօրութենէ իմմէ ծառայեցի հօր ձերում: 7 *Եւ հայր ձեր ընդ հարաւ ընդ իս. և փոխեաց զվարձս իմ զտասն բծացդ. և ոչ ետ նմա Ա̃Ծ առնել ինձ չար: 8 *Եթէ ասիցէ եթէ նկարէնքդ եղիցին քո վարձք. ա̃մ խաշինքս նկարէնս ծնանին: և եթէ ասիցէ եթէ սպիտակքդ եղիցին քո վարձք. ա̃մ խաշինքս սպիտակս ծնանին: 9 *Եւ էհան Ա̃Ծ զամենայն խաշինս հօր ձերոյ՝ և ետ ինձ: 10 *Եւ լինէր յորժամ զկծէին խաշինքն. տեսանէի աչօք իմօք յերազի. և ահա քաղք և խոյք ելանէին ՚ի վերայ մաքեաց և այծից. պիսակք և խայտախարիկք. և գորշախայտք: 11 *Եւ ասէ ցիս հրեշտակ Ա̃Յ ՚ի տեսլեան. յակոբ: և ես ասեմ. զի՞ է: 12 *Եւ ասէ՝ հայեաց աչօքքովք և տես զքաղսն և զխոյս. որք ելանեն ՚ի մաքեան և յայծս. զխարդ պիսակք. և գորշախայտք. և խայտախարիկք են. քանզի տեսի որչափ ինչ առնէ ընդ քեզ լաբան: 13 *Ես եմ Ա̃Ծ. որ երևեցայ քեզ ՚ի տեղւոջն Ա̃Յ. ‖ ուր օծեր ինձ զարձանն. և եդեր ինձ ուխտս: և արդ՝ արի և ել յերկրէս յայսմանէ. և երթ յերկիր ծննդեան քոյ. և եղէց ընդ քեզ: 14 *Պատասխանի ետուն ռաքէլ և լիա և ասեն ցնա. միթէ գո՞յ ևս մեր այսուհետև բաժին՝ և ժառանգութի՛ ՚ի տան հօր մերոյ: 15 *Ոչ ապաքէն իբրև զօտարոտի՞ս համարեալեմք նմա. զի վաճառեաց զմեզ՝ և եկեր ուտելով զարծաթ մեր: 16 *Ա̃մ մեծութի և փառք, զոր էհան Ա̃Ծ ՚ի հօրէ մերմէ՝ մեզ եղիցի՝ և որդւոց մերոց. արդ՝ զոր ինչ ասաց քեզ Ա̃Ծ՝ արա՛: 17 *Յարեաւ յակոբ՝ էառ զկանայս իւր և զմանկունս իւր. և եհան զնոսա յուղտս: 18 *Եւ խաղացոյց զա̃մ զինչս իւր և զա̃մ ստացուածս իւր՝ զոր արար ՚ի միջագետս ասորւոց. երթալ առ իսահակ հայր իւր յերկիրն քանանացւոց: 19 *Եւ լաբան երթեալ էր ՚ի կտուրս խաշանց իւրոց: և գողացաւ ռաքէլ զկուռս հօր իւրոյ: 20 *Եւ գողացաւ յակոբ զսիրտն լաբանայ աներոյ իւրոյ՝ ՚ի չպատմել նմա թէ գնայցէ: 21 *Եւ գնաց ինքն. և ա̃մ ինչ որ իւր էր: և յարուցեալ էանց ընդ գետ՝ և դիմեաց ՚ի լեառն գաղաադու: 22 *Ազդ եղև լաբանու ասորւոյ յաւուրն երրորդի եթէ գնաց յակոբ: 23 *Եւ առեալ զեղբարս իւր ընդ իւր, պնդեցաւ զկնի նո՛ր ճանապարհ զեօթն աւուրս և եհաս նմա ՚ի լերինն գաղաադու: 24 *Եւ եկն Ա̃Ծ առ լաբան ասորի ՚ի տեսլեան գիշերոյ՝ և ասէ ցնա. զգո՛յշ լեր անձին քում. գուցէ խօսիցիս ընդ յակոբայ անզգամութեամբ: և եհաս լաբան յակոբայ: 25 *Եւ յակոբ եհար զխորանն իւր ՚ի լերինն: և լաբան կացոյց զեղբարս իւր ՚ի լերինն գաղաադու: 26 *Եւ ասէ լաբան ցյակոբ. ընդէ՞ր արարեր զայդ՝ ընդէ՞ր գաղտագնաց եղեր յինէն. և գողացար զիս. և վարեցեր զդստերս իմ իբրև զգերեալս սրոյ: 27 *Եթէ ազդարարեալ էր ինձ. առաքէի զքեզ ուրախութեամբ. և արուեստա կանօք թմբկաց և քնարաց: 28 *Եւ չէի՞ արդեօք արժանի համբուրել զորդեակս իմ՝ և զդստերս իմ. և արդ անմտութի արարեր: 29 *Եւ այժմ ձեռնհաս էի առնել քեզ չար՝ բայց Ա̃Ծ հօր քոյ երէկ ասաց ցիս. ասէ՝ զգո՛յշ լեր. գուցէ խօսիցիս ընդ յակոբայ անզգամութի: 30 *Եւ արդ գնացեալ երթաս՝ զի ցանկանալով ցանկացեալ ես

‖ Ծն. 28.18.

ես երթալ 'ի տուն հօր քոյ ։ և ընդէ՞ր
գողացար զաստուածսն իմ ։ * Պատաս- 31
խանի ետ յակոբ՝ և ասէ ցլաբան՝ քան
զի երկեայ ։ ասացի, թէ գուցէ հանի-
ցես և զդստերս քո յինէն ․ և զամե-
նայն ինչս իմ ։ * Եւ ասէ յակոբ ․ առ 32
ում գտցես զաստուածսն քո ․ մի կեց-
ցէ առաջի եղբարցս մերոց ։ և արդ
ծանիր ինչ 'ի քո ընչից առ իս՝ և առ-
ցես ․ և ծանեաւ առ նմա և ոչինչ ․
և ոչ գիտէր յակոբ՝ թէ ռաքելայ
կինն իւրոյ գողացեալ էր զնա ։ * Եւ 33
մտեալ լաբան յուզէր 'ի տան յակոբայ ․
և 'ի տան լիայ ․ և 'ի տան երկոցունց
հարճիցն ․ և ոչ գտանէր ․ և ելեալ 'ի
տանէ անտի լիայ՝ եմուտ 'ի տուն ռա-
քելի ։ * Իսկ ռաքելի առեալ զկուռսն 34
եդ ընդ ուղտու պատատաւ ․ և նստաւ
'ի վերայ նց ։ և յուզեաց լաբան զամ
տաղաւարն և ոչ եգիտ ։ * Եւ նա ասէ 35
ցհայր իւր ․ մի ինչ ծանր թուեսցի քեզ
տէր ․ ոչ կարեմ յոտն յառնել առաջի
քո ․ քանզի 'ի կանանց օրէնս եմ ․ և յու-
զեաց լաբան զամ զտունն՝ և ոչ եգիտ
զկուռսն ։ * Բարկացաւ յակոբ՝ և կա- 36
գէր ընդ լաբանու ։ պատասխանի ետ
յակոբ՝ և ասէ ցլաբան ․ զի՞նչ մեղս է
իմ ․ կամ զի՞նչ յանցանք են իմ՝ զի պն-
դեցար զհետ իմ ։ * Եւ յուզեցեր զամ 37
զինչս իմ ․ զի՞նչ գտեր յամ ընչից քոյ 'ի
տան իմում ․ դի՛ր առաջի եղբարցս
իմոց՝ և եղբարց քոց ․ և յանդիմանես-
ցեն 'ի մէջ մեր երկոցունց ։ * Ի քսան 38
ամ է զի էի ընդ քեզ ․ ոչխարք քո և
այծք՝ ոչ ստերջեցան ․ և զխոյս մաքեաց
քոց ոչ կերի ։ * Զգազանաբեկն ոչ բե- 39
րէի առ քեզ ․ այլ ես յանձնէ տուժէի ․
զգողօնի տուընջեան ․ և զգողայինս գի-
շերոյ ։ * Զցերեկ այրեալ լինէի 'ի 40
տօթոյ ․ և զցայգ 'ի ցրտոյ ․ հատեալ
էր քուն յաչաց իմոց ։ * Ի քսան ամ 41
է 'ի տան քումէի ․ զչորեքտասան ամ
փոխանակ դստերաց քոց վաստակե-
ցի ․ և զվեց ամ 'ի խաշինս քո ․ և խաբէ-
ցեր զիս 'ի վարձս տասն բծայս ։ * Եւ 42
թէ ոչ Ած հօր իմոյ Ած աբրահամու ․
և երկիւղն իսահակայ էր ընդ իս ․ այժմ
թերևս ունայն իսկ արձակէիր զիս ․
այլ զտառապանս իմ ․ և զվաստակս
ձեռաց իմոց ետես Ած ․ և յանդիմա-
նեաց զքեզ երէկ ։ * Պատասխանի ետ 43
լաբան՝ և ասէ ցյակոբ ։ դստերքդ
դստերք իմ են ․ և ուստերքդ ուստերք
իմ են ․ և խաշինքդ խաշինք իմ են ․ և
ամենայն ինչ զոր դու տեսանես՝ իմ է,
և դստերացդ իմոց ։ և արդ զի՞նչ արա-
րից դոցա այսօր՝ կամ որդւոց դոցա ․
զոր ես ծնան ։ * Բայց արդ եկ՝ ուխտ 44
դիցուք ես և դու ․ և եղիցի 'ի վկայութի
ընդ իս և ընդ քեզ ։ և ասէ ցնա ․ ահա
ոչոք է 'ի միջի մերում ․ բայց Ած վկայ
45 ընդ իս և ընդ քեզ ։ * Եւ առեալ յա-
46 կոբայ վէմ կանգնեաց արձան ։ * Եւ
ասէ ցեղբարսն իւր ․ կուտեցէք քա-
րինս ։ և կուտեցին քարինս ․ և արարին
բլուր ․ և կերին, և արբին անդ 'ի վե-
47 րայ բլրոյն ։ * Եւ կոչեաց զնա լաբան
կարկառ վկայութե ․ և յակոբ կոչեաց
զնա կարկառ վկայ ։ իւրաքանչիւր
48 ըստ յատկութե լեզուի իւրոյ ։ * Եւ
ասէ ցնա լաբան ․ բլուրս այս վկայ է
ընդ իս և ընդ քեզ այսօր ։ և կոչեաց
զնա լաբան բլուր վկայութե և յակոբ
կոչեաց զնա բլուր վկայ ․ և ասէ լա-
բան ցյակոբ ․ բլուրս այս և արձանս
այս՝ զոր կանգնեցի ընդ իս և ընդ քեզ ․
վկայ է բլուրս այս ․ վկայ է արձանս
այս ․ վասն այնորիկ կոչեցաւ անուն
49 բլրոյն վկայութի ։ * Եւ տեսիլն զոր
մէ ասաց՝ թէ տեսցէ Ած ընդ իս և ընդ
քեզ ․ զի մեկնիմք ընկեր յընկերէ ։
50 * Եթէ վշտացուսցես զդստերս իմ ․
եթէ առցես զկանայս առ դստերօք
իմովք ։ զգոյշ լեր՝ զի ոչոք է ընդ մեզ
որ տեսանէ ․ Ած լիցի վկայ ընդ իս և
51 ընդ քեզ ։ * Եւ ասէ լաբան ցյակոբ ․
ահա կարկառս այս՝ և ահա արձան ․
զոր հաստատեցաք ընդ իս և ընդ քեզ ։
52 * Եղիցի վկայ կարկառս ․ և վկայ ար-
ձանս ․ զի ոչ ես անցից ըստ կարկառս ․
և մի դու անցանիցես ըստ բլուրս՝ և
ըստ արձանս ըստ այս՝ չարութեամբ ․
53 * Ած աբրահամու և Ած նաքովրայ ե-
ղիցի դատաւոր 'ի միջի մերում ․ Ած
հարցն նոցա ։ և երդուաւ յակոբ յեր-
54 կիւղ հօր իւրոյ իսահակայ ։ * Եւ եզեն
յակոբ զենլիս 'ի լերինն ․ և կոչեաց
զեղբարս իւր ուտել զհաց ․ կերին՝ և
55 արբին՝ և ագան 'ի լերին անդ ։ * Եւ
յարուցեալ լաբան 'ի վաղիւ անդր
համբուրեաց զորդիս իւր և զդստերս
իւր ․ և օրհնեաց զնոսա ․ և գնաց՝ դարձ
արարեալ լաբանայ 'ի տեղի իւր ։

## ԳԼ ։ ԼԲ ։

1 Եւ յակոբ գնաց զճանապարհ իւր ։ || Սղմ. 48.16.
և հայեցեալ ետես զբանակ ԱՅ
բանակեալ ։ և ընդ առաջ եկին նմա
2 հրեշտակք ԱՅ ։ * Եւ ասէ յակոբ ,
իբրև ետես զնոսա բանակ ԱՅ է ։ և
կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ բա-
3 նակս ։ * Եւ առաքեաց յակոբ հրեշ-
տակս յառաջ քան զինքն՝ առ եսաւ եղ-
բայր իւր յերկիրն 'ի սէիր ․ յաշխարհն
4 եդովմայ ։ * Պատուէր ետ նց՝ և ասէ ․
այսպէս ասասջիք Տն իմում եսաւայ ․

թէ այսպէս ասէ ծառայ քո յակոբ։ ընդ
լաբանու կեցի՝ և յամեցայ մինչև
ցայժմ։* Եւ եղեն իմ արջառ՝ և ոչխար. 5
և էշք, ծառայք և աղախնայք. և առա
քեցի պատմել տեառն իմում եսաւայ՝
զի գտցէ ծառայ քո շնորհս առաջի
քո։ * Եւ դարձեալ հրեշտակացն առ 6
յակոբ ասեն. չոգաք առ եսաւ եղբայր
քո. և գայ ընդ առաջ քո. և չորեքհա
րիւր այր ընդ նմա ։ * Զահի հարաւ 7
յակոբ. և տարակուսեալ էր. և զատոյց
զժողովուրդն որ ընդ նմա էր. և զար
ջառ. և զոչխար՝ և զուղտս՝ յերկուս
բանակս։* Եւ ասէ յակոբ. եթէ եկես 8
ցէ եսաւ յառաջին բանակն՝ և հարցէ
զնա. ապրեսցի երկրորդ բանակն։* Եւ 9
ասէ յակոբ. Ած հօր իմոյ աբրահամու.
և Ած հօր իմոյ իսահակայ. Տր որ ասա
ցեր ցիս թէ երթ յերկիր ծննդեան
քո և բարի արարից քեզ։* Յեմ բաւա 10
կան ամ արդարութեն՝ և ճշմարտու
թեն. զոր արարեր ընդ ծառայի քում.
զի ցուպ 'ի ձեռին անցի ընդ այս յոր
դանան. և արդ աւասիկ եղէ յերկուս
բանակս։ * Եւ ապրեցո զիս 'ի ձեռաց 11
եղբօր իմոյ եսաւայ. զի զահիհարեալ
եմ ես 'ի նմանէ. գուցէ եկեալ հարկա
նիցէ զիս՝ մայր առ մանկամբ։* Եւ դու 12
ասացեր՝ եթէ բարի արարից քեզ. և
եդից զզաւակ քո իբրև զաւազ ծովու՝
որ ոչ թուիցի 'ի բազմութէ ։* Եւ 13
ննջեաց անդ զայն գիշեր. և էառ՝ յորոց
ածէրն ձեռամբ իւրով պատարագս.
և առաքեաց եսաւայ եղբօր իւրում։
*Այծս երկերիւր. քաղս քսան։ մա 14
քիս երկերիւր. խոյս քսան։ *Ուղտս 15
ծնեալս կողոռամբք հանդերձ՝ երե
սուն. կովս քառասուն։ և ցուլս տասն.
էշս քսան. և մտրուկս տասն։* Եւ ետ 16
'ի ձեռս ծառայից իւրոց. հօտս՝ հօտս՝
առանձինն։ և ասէ ցծառայսն իւր ։
երթայք դուք յառաջ քան զիս. և բա
ցագոյնս 'ի միմեանց տանիցիք հօտս 'ի
հօտից։* Պատուիրեաց առաջնոյն՝ և 17
ասէ. եթէ պատահիցէ քեզ եսաւ եղ
բայր իմ. և հարցանիցէ՝ թէ ո՞յր ես՝ և
յո՞ երթաս. և ո՞յր է այդ՝ որ առաջիդ
քո երթայ։ * Եւ ասասցես. թէ ծա 18
ռայի քոյ յակոբայ պատարագք են. զոր
առաքեաց տեառն իւրում եսաւայ.
և ինքն զկնի մեր գայ։* Պատուիրեաց 19
առաջնոյն. և երկրորդին. և երրորդին.
և ամենեցուն որք երթային յառաջ
զհօտ խաշանցն, ասէր՝ ըստ բանիս այս
միկ խօսեսջիք ընդ եսաւայ. յորժամ
գտանիցէք զնա։ * Եւ ասասջիք՝ ահա 20
ծառայ քո յակոբ գայ զհետ մեր. քան
զի ասաց՝ եթէ ցածուցից զերեսս նր

պատարագօքդ՝ որք երթան առաջի.
և ապա տեսից զերեսս նորա. թերևս
արասցէ մեծարանս երեսաց իմոց։
21 *Եւ երթային յառաջագոյն ընծայքն
քան զնա. և ինքն ննջեաց զայն գիշեր
22 անդէն 'ի բանակին։* Եւ յարուցեալ
'ի նմին գիշերի. էառ զերկուս կանայսն.
և զերկուս աղախնայսն. և զմետասան
որդիսն իւր. և էանց ընդ հունն յաբո
23 կայ։* Եւ էառ անցոյց զնս ընդ ձորն.
24 և զամ ինչ որ իւր էր։ * Եւ մնաց յա
կոբ միայն. և մարտեաւ այր մի ընդ
25 նմա մինչև ցառաւօտ ։ * Եւ իբրև
ետես թէ ոչ յաղթեաց նմա, բուռն
էհար զամոլաջլէ զտի նր. և ընդար
մացոյց զամոլաջիլ զտին յակոբայ. 'ի
26 կռուելն իւրում ընդ նմա։* Եւ ասէ
ցնա. արձակեա զիս՝ քանզի այգ եղև ։
և նա ասէ. ո՛չ արձակեցից զքեզ՝ թէ
27 ոչ օրհնեսցես զիս։ * Եւ նա ասէ ցա՛
զինչ անուն է քո. և սա ասէ ցնա՝ յա
28 կոբ։ * Եւ ասէ ցա. յայսմ հետէ ոչ
կոչեսցեն զանուն քո յակոբ. այլ իս
րայել եղիցի անուն քո. զի ժուժկալե
ցեր ընդ Այ. և ընդ մարդկան զօրա
29 ւոր լիջիր։ * Եհարց յակոբ՝ և ասէ.
պատմեա ինձ զանուն քո. և ասէ՝ զի՞
հարցանես զանուանէ իմմէ ։ և օրհ
30 նեաց զնա անդ ։ *Եւ կոչեաց յակոբ
զանուն տեղւոյն այնորիկ՝ տեսիլ Այ.
զի տեսի զԱծ դէմ յանդիման. և ապ
31 րեցաւ անձն իմ ։ * Եւ ծագեցաւ
նմա արև իբրև էանց տեսիլն Այ։ և
նա կաղայր երթայր՝ 'ի զտէ անտի։
32 * Վասն այնորիկ ոչ ուտեն որդիքն
իսրայելի զամոլաջիլն՝ զոր ընդարմա
ցոյց. որ է 'ի վերայ տախտակի զտին,
մինչև ցայսօր։ զի բուռն էհար զտախ
տակէ զտին յակոբայ. և ընդարմա
ցոյց զամոլաջիլ նորա։

## ԳԼ. ԼԳ.

1 Զաչս իւր 'ի վեր եբարձ յակոբ և
ետես. և ահա եսաւ եղբայր
իւր գայր. և ընդ նմա արք չորեքհա
րիւր։ և բաշխեաց յակոբ զմանկունսն
'ի լիայ՝ և յռաքէլ. և յերկուս աղախ
2 նայսն։ * Եւ արար զերկուս աղախ
նայսն և զորդիս նց առաջի, և զլիայ
և զորդիս նր զկնի. և զռաքէլ և զյո
3 սէփ հուսկ յետոյ ։ * Եւ ինքն էանց
յառաջ քան զնոսա՝ և երկիր եպագ
եօթն անգամ 'ի վր երկրի. մինչև մեր
4 ձենալ առ եղբայրն իւր։* Եւ ընթա
ցաւ եսաւ ընդ առաջ նորա. գիրկս
էարկ նմա և համբուրեաց. և անկաւ
'ի վզ պարանոցի նր՝ և համբուրեաց
5 զնա. և լացին երկոքեան։* Եւ հայե
ցեալ

ցեաւ 'ի վեր եսաւ զկանայսն և զմանկունս. և ասէ. զորքս զինչ են քո: և նա ասէ. մանկունք իմ են. որովք ողորմեցաւ Ա՟Ծ ծառայի քում: 6 *Եւ մատեան աղախնայքն և որդիք նոցա, և երկիր պագին նմա: 7 *Եւ մատեաւ լիա և որդիք իւր՝ և երկիր պագին նմա. յետոյ մատեաւ յովսէփ և ռաքէլ՝ և երկիր պագին նմա: 8 *Եւ ասէ զինչ էր այն ամենայն. որ ինձ դիպեցաւ: և նա ասէ. զի գտցէ շնորհս ծառայ քո առաջի քո: 9 *Եւ ասէ եսաւ. կայ և իմ շատ՝ եղբայր՝ քեզ լիցին քոյդ: 10 *Եւ ասէ յակոբ. մի այդպէս. եթէ գտի շնորհս առաջի քո՝ ընկալ զընծայսն 'ի ձեռաց իմոց. քանզի այնպէս տեսի զերեսս քո. որպէս ոք տեսանիցէ զերեսս Ա՟Յ. և զուարթասցիս ընդ իս: 11 *Առ զօրհնութիւնդ իմ, զոր մատուցի քեզ. զի ողորմեցաւ ինձ Ա՟Ծ. և է իմ ամենայն ինչ: և բռնադատեաց զնա և էառ: 12 *Եւ ասէ՝ չուեսցուք՝ գնասցուք՝ և երթիցուք զուղղորդն: 13 *Եւ ասէ ցնա. Տ՟ր իմ ինքնին գիտէ՝ զի մանկունքս մատաղ են. և ոչխարք, և արջառոյ ծնունդ արձակեալ է: և եթէ մի օր ստիպեմ զդոսա, մեռանին ամենայն խաշինքդ: 14 *Առաջեսցէ տէր իմ քան զծառայ իւր. և ես բառ կարի բառ պարապոյ ճանապարհիդ առաջի իմ. և բառ կազդուրել մանկանց իմոց խաղացից, մինչև եկից առ տէր իմ 'ի սէիր: 15 *Եւ ասէ եսաւ. թող թողից առ քեզ 'ի ժողովրդենէ աստի՝ որք ընդ իս են. և նա ասէ. ընդէ՞ր է ինձ այդ. շատ է զի գտի շնորհս առաջի քո տէր: 16 *Եւ դարձաւ յաւուր յայնմիկ եսաւ ընդ ճանապարհ իւր 'ի սէիր: 17 *Եւ յակոբ չուեաց՝ և արար իւր անդ տունս. և խաշանց իւրոց արար դադարս. վասն այնորիկ կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ խորանս: 18 *Եւ եկն յակոբ 'ի սաղէմ քաղաք սիկիմացւոց. որ է յերկրին քանանացւոց. իբրև եկն 'ի միջագետաց ասորւոց. և բնակեցաւ յանդիման քաղաքին: 19 *Եւ ստացաւ զվիճակ անդին, ուր եհար զխորան իւր, յեմովրայ հօրէ սիւքեմայ հարիւր ոչխարի: 20 *Եւ շինեաց անդ սեղան. և կարդաց զԱ՟Ծ իսրայէլի:

այ

'ի սոկօթ.

## ԳԼ: ԼԴ:

1 Եւ ել դինա դուստր լիայ՝ զոր ծնաւ յակոբայ, 'ի զննել դստերաց աշխարհին: 2 *Եւ ետես զնա սիւքեմ որդի եմովրայ քոռեցւոյ. որ իշխանն էր երկրին. և էառ զնա. և ննջեաց ընդ նմա. և տառապեցոյց զնա: 3 *Եւ ուշ եդեալ դինայի դստերն յակոբայ՝ սիրեաց զկոյսն. և խօսեցաւ ըստ մտաց կուսին: 4 *Եւ խօսեցաւ սիւքեմ ընդ եմովրայ հօր իւրոյ՝ և ասէ. առ դու ինձ զաղջիկս զայս կնութեան: 5 *Եւ լուաւ յակոբ, եթէ պղծեաց որդին եմովրայ զդինա զդուստր նորա. և որդիք նր էին 'ի խաշինս 'ի դաշտին. լուռ եղև յակոբ մինչև եկին նոքա: 6 *Եւ ել եմովր հայր սիւքեմայ առ յակոբ խօսել ընդ նմա: 7 *Եկին և որդիքն յակոբայ 'ի դաշտէ: իբրև լուան տրտմեցան արքն. և տրտմութիւն էր նոցա յոյժ. զի խայտառակութիւն արար յիսրայէլի. մտանել առ դուստրն յակոբայ. և ոչ այնպէս վայելէր: 8 *Եւ խօսեցաւ ընդ նոսա եմովր՝ և ասէ: սիւքեմ որդի իմ սիրեաց ոգւով չափ զդուստր ձեր. 9 արդ տուք զնա նմա կնութեան: *Եւ արարէք ընդ մեզ խնամութիւն. զդստերս ձեր տուք մեզ. և զդստերս մեր 10 առէք որդւոց ձերոց: *Եւ բնակեցարուք 'ի միջի մերում. և երկիրդ ահա ընդ արձակ է առաջի ձեր. և բնակեցարուք՝ և վաճառեցարուք 'ի դմա. և 11 ստացարուք ստացուածս 'ի դմա: *Եւ ասէ սիւքեմ ցհայր նր և ցեղբարս նր. գտից շնորհս առաջի ձեր՝ և զոր ինչ 12 ասիցէք՝ տացուք: *Յաճախեցէք յոյժ զվարձանս և զօժիտս. և տաց՝ որ չափ և ասիցէք. և տուք ինձ զաղջիկն 13 զայն կնութեան: *Պատասխանի ետուն որդիքն յակոբայ՝ սիւքեմայ և եմովրայ հօր նր նենգութեամբ՝ և ասեն ցնոսա. զի պղծեցին զդինա քոյր նր: և ասեն շմաւոն և ղևի եղբարքն դինայ՝ որ14 դիքն լիայ: *Ոչ կարեմք առնել զայդ բան. տալ զքոյր մեր առն անթլփա15 տի. քանզի նախատինք են մեզ: *Այսու նմանեսցուք ձեզ. և բնակեսցուք 'ի միջի ձերում. եթէ լինիցիք իբրև զմեզ՝ և դուք. 'ի թլփատել ձեզ զամ 16 արու: *Եւ տացուք զդստերս մեր ձեզ. և 'ի դստերաց ձերոց առցուք մեզ կանայս. և բնակեսցուք առ ձեզ. 17 և եղիցուք իբրև ազգ մի: *Ապա թէ ոչ լուիջիք մեզ թլփատիլ. առեալ 18 զդստերս մեր 'ի բաց գնասցուք: *Եւ հաճոյ թուեցան բանքն առաջի եմովրայ. և առաջի սիւքեմայ որդւոյ եմով19 րայ: *Եւ ոչ յամեաց պատանին առնել զբանն. զի յոյժ հարեալ էր 'ի սէր դստերն յակոբայ. և նա էր պատուական քան զամենեսեան՝ որք 'ի 20 տան հօր նր էին: *Եւ եկին եմովր և սիւքեմ որդի նր 'ի դուռն քաղաքին իւրեանց. և խօսեցան ընդ արս քաղա21 քին իւրեանց՝ և ասեն: *Արքն այնոքիկ խա_

խաղաղութեամբ են ընդ մեզ. արդ բնա_
կեսցեն յերկրիս. և շահեսցին ՚ի սմա.
զի երկիրս ընդ արձակ է առաջի ն՟ց.
զդստերս նոցա առցուք մեզ կանայս.
և զդստերս մեր տացուք նոցա։ *Բայց 22
միայն այսու նմանեսցին մեզ արքն
բնակել ընդ մեզ. լինել ազգ մի. ՚ի թլ_
փատել մեզ զա՟մ արու. որպէս նոքայն
թլփատեալք են։ *Եւ խաշինք ն՟ց և անա 23
սուն ն՟ց և չորքոտանի ն՟ց ոչ ապաքէն
մեր լինիցի. բայց այնու և եթ նմանի
ցուք ն՟ց. և բնակեսցեն ՚ի միջի մերում։
*Եւ լուան եմորայ և սիւքեմայ որդ_ 24
ւոյ ն՟ր ամենեքին՝ որք ելանէին ընդ
դուռն քաղաքին իւրեանց. և թլփատե
ցին զմարմին անթլփատութե իւրեանց
ա՟մ արու. ամենեքին որք ելանէին ը՟ն
դուռն քաղաքի նոցա։ *Եւ եղև յաւ 25
ուրն երրորդի մինչ դեռ էին նոքա ՚ի
ցաւսն. առին երկու որդիքն յակոբայ,
շմաւոն և ղևի եղբարք դինայ, իւրա_
քանչիւր զսուր իւր՝ և մտին ՚ի քաղաքն
կաղմութբ. և կոտորեցին զա՟մ արու։
*Եւ զեմոր և զսիւքեմ զորդի նորա 26
սպանին ՚ի սուր սուսերի. և առին զդի
նա ՚ի տանէ սիւքեմայ՝ և ելին։ *Եւ 27
որդիքն յակոբայ մտին ՚ի վ՟ր վիրաւո
րացն. և առին աւար զքաղաքն. յո_
րում պղծեցին զդինա զքոյրն նոցա։
*Զարջառ և զոչխար և զէշս նոցա, 28
որք էին ՚ի քաղաքին. և որ ինչ ՚ի բացի
էր՝ առին։ *Եւ զամենայն մարդա_ 29
դերի նոցա. և զամենայն զկահ և զկա
րասի նոցա և զկանայս ն՟ց գերեցին։
և յափշտակեցին որինչ էր ՚ի քաղա_
քին՝ և որինչ ՚ի տունս։ *Եւ ասէ յա_ 30
կոբ ցշմաւոն և ցղևի. ատելի արարէք
զիս. երևիլ անզգամ ամենայն բնակ
չաց երկրիս. ՚ի մէջ քանանացւոց. և
փերեզացւոց. և ես սակաւաւոր եմ
թուով. արդ եթէ ժողովեսցին ՚ի վ՟ր
իմ և հարկանիցեն զիս. սատակելով
սատակեցայց ես, և տուն իմ։ *Եւ 31
ասեն. իսկ զիարդ. զի իբրև զբոզ
քարշեցին զքոյրն մեր։

## ԳԼ: ԼԵ:

Եւ ասէ Տ՟Ա՟Ծ ցյակոբ։ արի՝ ա՛նց ՚ի 1
տեղին ՚ի բեթէլ. և անդ բնա_
կեսցիս. և արասցես անդ սեղան Տ՟Ն
‖ որ երևեցաւն քեզ. ՚ի փախչելն քոյ յե_ ‖ Ծն. 28.13.
րեսաց եսաւայ եղբօր քոյ։ *Եւ ասէ 2
յակոբ ցընտանիս իւր. և ցամենեսին
որք ը՟ն նմա էին։ ՚ի բաց արէք զա՟ծս
օտարոտիս. որք ընդ ձեզ են, ՚ի միջոյ
ձերմէ. և սրբեցարուք՝ և փոխեցէք
զպատմուճանս ձեր։ *Եւ յարուցեալ 3
ելցուք ՚ի բեթէլ. և արասցուք անդ

սեղան Տ՟Ն. որ լուաւ ինձ յաւուր նե_
ղութե իմոյ. որ է ընդ իս. և ապրեցոյց
4 զիս ՚ի ճանապարհին՝ զոր գնայի։ *Եւ
ետուն ցյակոբ զա՟ծսն օտարոտիս.
որք էին ՚ի ձեռս ն՟ց. և զգինդսն՝ որք
յականջս իւրեանց։ և ծածկեաց զն՟ս
յակոբ ՚ի ներքոյ բևեկնւոյն ՚ի սիկիմ։
և կորոյս զն՟ս մինչև ցայսօր ժամանա
5 կի։ *Եւ չուեաց իսրայէլ ՚ի սիկիմայ.
և եղև ահ Տ՟Ն ՚ի վ՟ր քաղաքացն. որք
շուրջ զնովաւ. և ոչ ելին զհետ որդ_
6 ւոցն իսրայէլի։ *Եւ եկն յակոբ ՚ի
լուզա որ է յերկրին քանանացւոց. այն
ինքն է բեթէլ։ ինքն և ամենայն ժո_
7 ղովուրդն, որ ընդ նմա։ *Եւ շինեաց
անդ սեղան. և կոչեաց զանուն տեղ
ւոյն բեթէլ. զի անդ ‖ երևեցաւ նմա ‖ Ծն. 28.18.
Տ՟Ա՟Ծ ՚ի փախչել ն՟ր յերեսաց եսաւայ
8 եղբօր իւրոյ։ *Եւ մեռաւ դեբօրա
դայեակն ռեբեկայ. և թաղեցաւ ՚ի
ներքոյ բեթելայ ընդ կաղնեաւն. և
կոչեաց զանուն նորա կաղնի սգոյ։
9 *Եւ երևեցաւ Ա՟Ծ յակոբայ՝ մինչդեռ
անդ էր ՚ի լուզ. յորժամ եկն ՚ի միջա_
գետաց ասորւոց։ և օրհնեաց զնա ա՟ծ։
10 *Եւ ասէ ցնա Ա՟Ծ. ‖ անուանդ քո յա_ ‖ Ծն. 32.29.
կոբ. ոչ ևս կոչեսցի յակոբ. այլ իէլ
եղիցի անուն քո. և կոչեաց զանուն ն՟ր
11 իէլ։ *Եւ ասէ ցնա Ա՟Ծ՝ ես եմ Ա՟Ծ
քո բաւական։ աճեսջիր և բազմա_
ցի՛ր. ազգք և ժողովք ազգաց եղիցին
՚ի քէն. և թագաւորք յերանաց քոց
12 ելցեն։ *Եւ զերկիրդ, զոր ետու ա_
բրահամու և իսահակայ՝ քեզ տաց զդա։
քեզ եղիցի. և զաւակի քում յետ քո տաց
13 զերկիրդ զայդ։ *Եւ վերացաւ ՚ի նմա
նէ Ա՟Ծ ՚ի տեղւոջէն՝ ուր խօսեցաւ ը՟ն
14 նմա։ *Եւ կանգնեաց յակոբ զարձան
՚ի տեղւոջն ուր խօսեցաւ ը՟ն նմա Ա՟Ծ՝
արձան քարեղէն։ և նուիրեաց ՚ի նմա
15 նուէրս. և եհարկ ՚ի վ՟ր ն՟ր իւղ։ *Եւ
կոչեաց զանուն տեղւոյն ուր խօսեցաւ
16 ընդ նմա Ա՟Ծ՝ բեթէլ։ *Չուեաց ՚ի
բեթելայ։ և եղև իբրև մերձեցաւ ՚ի
քաբրաթայ երկիր, մտանել յեփրա_
17 թայ, ծնաւ ռաքէլ։ *Եւ դժուարա_
ծին եղև ՚ի ծննդեանն. և եղև ՚ի վշտա
նալն նորա ՚ի ծննդեանն, և ասէ ցնա
ծնուցիչն՝ քաջալերեա՛ց. զի այդ ևս քո
18 ուստր է։ *Եւ եղև ընդ հանել ոգւոյն.
քանզի մեռաւ. կոչեաց զանուն նորա
որդի վշտաց իմոց. և հայրն կոչեաց
19 զնա բենիամին։ *‖ Մեռաւ ռաքէլ՝ և ‖ Ծն. 48.7.
թաղեցաւ ՚ի ճանապարհին եփրա_
20 թայ. այն իսկ է բեթղեհէմ։ *Եւ կանգ
նեաց յակոբ արձան ՚ի վ՟ր շիրմի նորա.
այն է արձան շիրմի ռաքելայ մինչև
21 ցայսօր ժամանակի։ *Եւ չուեաց

Իսրայէլ՝ եւ եհար զխորան իւր յայնկոյս
Ծն․ 49․4․
աշտարակին գադերայ ։ * Եւ եղեւ 22
իբրեւ բնակեցաւ իսրայէլ յերկրին
յայնմիկ ․ գնաց ռուբէն՝ եւ ննջեաց ընդ
բաղղայ հարճի հօր իւրոյ ․ լուաւ իս_
րայէլ՝ եւ չար թուեցաւ առաջի նորա․ եւ
էին որդիքն յակոբայ երկոտասանք ։
* Որդիք լիայ՝ անդրանիկ յակոբայ՝ 23
ռուբէն ։ շմաւոն ։ ղեւի ․ յուդայ ․ իսա
քար ․ զաբուղոն ։ * Եւ որդիք ռաքէլի՝ 24
յովսէփ․ եւ բենիամին ։ * Եւ որդիք բաղ_ 25
ղայ նաժշտին ռաքելայ՝ դան, եւ նեփ_
թաղիմ․ այս են որդիք յակոբայ․ որք
եղեն նմա ՚ի միջագետս ասորւոց ։ * Եւ 26
որդիք զելփայ նաժշտին լիայ․ գադ, եւ
ասեր ։ * Եւ եկն յակոբ առ իսահակ 27
հայր իւր ՚ի մամբրէ՝ ՚ի քաղաք դաշ_
տին․ այն է քեբրոն․ յերկրին քանանաց
ւոց․ ուր պանդխտեցան աբրահամ եւ
իսահակ ։ * Եւ եղեն ամք աւուրք իսա 28
հակայ՝ զոր եկեաց․ ամք հարիւր եւ
ութսուն ։ * Եւ պակասեալ իսահա_ 29
կայ մեռաւ․ եւ յաւելաւ յազգ իւր․ ծե_
րացեալ եւ լի աւուրբք ․ եւ թաղեցին
զնա եսաւ եւ յակոբ որդիք իւր ։

## ԳԼ ։ ԼԶ ։

Եւ այս են ծնունդք եսաւայ․ նա է 1
եդոմ ։ * Եւ եառ իւր եսաւ կա_ 2
նայս ՚ի դստերաց քանանացւոց․ զադ_
դա զդուստր ելոնայ քետացւոյ ։ եւ զօ_
ղիբամա դուստր անայի որդւոյ սեբե
գոնի խեւացւոյ ։ * Եւ զբասեմաթ 3
զդուստր իսմայելի զքոյր նաբէո_
Ա․ Մն․ 1․35․
թայ ։ * Եւ ծնաւ ադդա եսաւայ 4
զեղիփազ ։ եւ բասեմաթ ծնաւ զռա_
գուէլ ։ * Եւ ողիբամա ծնաւ զյեուս 5
եւ զեգղոմ․ եւ զկորխ ․ սոքա են որդիք
եսաւայ ․ որք եղեն նմա յերկրին քա_
նանացւոց ։ * Եւ եառ եսաւ զկանայս 6
իւր ․ եւ զուստերս եւ զդստերս իւր ․ եւ
զամ մարդիկ տան իւրոյ․ եւ զամենայն
ինչս՝ եւ զանասունս , եւ զամենայն
ինչ զոր ստացաւ՝ եւ զոր արար յերկրին
քանանացւոց ։ եւ գնաց յերկրէն քա_
նանացւոց յերեսաց յակոբայ եղբօր
Ծն․ 13․6․
իւրոյ ։ * Զի էին բազում ինչք նոցա 7
՚ի միասին բնակելոյ ․ եւ ոչ կարէր եր_
կիրն պանդխտութե հանդարտել նոցա
՚ի բազմութենէ ընչից իւրեանց ։
Յեսու 24․ 4․
* Եւ բնակեցաւ եսաւ ՚ի լերինն 8
սէիր ։ եսաւ ․ որ նա ինքն է եդոմ ։ * Եւ 9
այս են ծնունդք եսաւայ հօրն եդո_
մայեցւոց ՚ի լերինն սէիր ։ * Եւ այս են 10
Ա․ Մն․ 1․ 35․
անուանք որդւոցն եսաւայ ․ եղիփազ
որդի ադդայի , կնոջ եսաւայ ։ եւ ռա_
գուէլ՝ որդի բասեմաթայ , կնոջ եսա
ւայ ։ * Եւ եղեն որդիք եղիփազայ ․ 11
թեման ․ օմար ․ սովփար ․ գոթամ ․ եւ

12 կենեզ ։ * Եւ թամար էր հարճ եղի_
փազու որդւոյ եսաւայ ․ եւ ծնաւ եղի_
փազու զամաղէկ ։ սոքա են որդիք ադ_
13 դայի կնոջ եսաւայ ։ * Եւ այս են որդիք
ռագուէլի ․ նաքոթ ․ զարեհ ․ սամմա ․
եւ մեզա ․ սոքա են որդիք բասեմա_
14 թայ կնոջ եսաւայ ։ * Եւ այս են որ_
դիք ողիբամայ դստեր անայի որդւոյ
սեբեգոնի կնոջ եսաւայ ։ եւ ծնաւ
եսաւայ զեուս ․ եւ զեգղոմ ․ եւ զկորխ ։
15 * Սոքա են իշխանք՝ որդիք եսաւայ ։
որդիք եղիփազու անդրանկանն եսա
ւայ ․ իշխան թեման ․ իշխան օմար ․
16 իշխան սոփար ․ իշխան կենեզ ։ * Իշխան
կորխ ․ իշխան գոթոմ ․ իշխան ամաղէկ ․
սոքա են իշխանք եղիփազու յերկրին
եդոմայեցւոց ․ սք են որդիք ադդայի ։
17 * Եւ այս են որդիք ռագուէլի որդւոյ
եսաւայ ։ իշխան նաքոթ ․ իշխան զարեհ
իշխան սամմայ՝ իշխան մոզէ ։ այս են
իշխանք ռագուէլի յերկրին եդոմայ ։
սոքա են որդիք բասեմաթայ կնոջ
18 եսաւայ ։ * Եւ այս են որդիք ողիբա_
մայ կնոջ եսաւայ իշխան յեուս ․ իշխան
յեգղոմ ․ իշխան կորխ ․ այս են իշ_
խանք ողիբամայ դստեր անայի կնոջ
եսաւայ ․ սոքա են որդիք եսաւայ ։
19 * Եւ այս են իշխանք նոցա ․ եւ այս են
20 որդիք եդոմայ ։ * Եւ այս են որդիք
Ա․ Մն․ 1․38․
սէիրայ քոռացւոյ ․ որ բնակեալ էր ՚ի
սէիր ։ ղոտան ․ սեբաղ ․ սեբեգոն ․ եւ
21 անայ ։ * Դեսոն ․ եւ ասեր՝ եւ ռիսոն ․ սք
են իշխանք քոռեցւոյն ․ որդւոյ սէիրայ ․
22 յերկրէն եդոմայ ։ * Եւ եղեն որդիք
ղոտանայ ․ քոռի ․ եւ եմման ․ եւ քոյր
23 ղոտանայ՝ թամնայ ։ * Եւ սոքա են
որդիք սոբաղայ ․ գաղոմ ․ եւ մանա_
քաթ ․ եւ գեբաղ ․ եւ սոփար ․ եւ օնան ։
24 * Եւ այս են որդիք սեբեգոնայ ․ այիէ ․
եւ օնան ․ այս օնան է ․ որ եգիտ զաղ_
բիւրն յանապատի ․ մինչ արածէր
25 զէշսն սեբեգոնի հօր իւրոյ ։ * Եւ այս
են որդիք անայի՝ դեմոն ․ նողիբամայ
26 դուստր անայ ։ * Եւ այս են որդիք
դեմոնայ ․ ամադան ․ եւ եսբան ․ եւ յեթ_
27 րան ․ եւ քառան ։ * Եւ այս են որդիք
ասերայ ․ բաղդան ․ եւ զուկան ․ ոնի
28 կան ․ եւ ուկամ ։ * Եւ այս են որդիք
29 ռիսոնի ․ ոս ․ եւ առան ։ * Եւ այս են ․
իշխանք քոռեայ ․ իշխան ղոտան ․ իշ_
խան առասաղ ․ իշխան սեբեգոն ․ իշ_
30 խան անայ ։ * Իշխան դեմոն ․ իշխան
ասեր ․ իշխան դիսոն ․ այս են իշխանք
քոռեայ ․ ՚ի պետութիս իւրեանց յեր_
31 կրին յեդոմայ ։ * Եւ այս թագաւորք
են ․ որք թագաւորեցին յերկրին եդո_
մայեցւոց ․ մինչեւ թագաւորեալ էր
32 թագաւոր յիսրայէլի ։ * Եւ թագաւո

րեաց

րեաց յեդոմ՝ Բաղակ որդի Սեփորայ. և անուն քաղաքին նորա Դեննաբա։ *Եւ մեռաւ Բաղակ. և թագաւորեաց 33 ընդ նորա Յոբաբ որդի Զարեհի՝ ՚ի Բոսսորայ։ *Եւ մեռաւ Յոբաբ. և թա_ 34 գաւորեաց ընդ նորա Ասոմ՝ յերկրէ Թեմանացւոց։ *Եւ մեռաւ Ասոմ. 35 և թագաւորեաց ընդ նորա. Ադադ որդի Բարադայ. որ կոտորեաց զՄադիամ ՚ի դաշտին Մովաբացւոց. և անուն քաղաքի նորա Գեթեմ։ *Եւ մեռաւ 36 Ադադ. և թագաւորեաց ընդ նորա Սամաղա ՚ի Մասեկայ։ *Եւ մեռաւ 37 Սամաղա. և թագաւորեաց ընդ նորա Սաւուղ յՌովբովթայ՝ որ առ գետեզերբն։ *Եւ մեռաւ Սաւուղ. և թագաւորեաց 38 ընդ նորա Բաղդայենոն. որդի Աքոբովրայ։ *Եւ մեռաւ Բաղդենոն որդի Աքոբո 39 րայ. և թագաւորեաց ընդ նորա Ադադ որդի Բարադայ. և անուն քաղաքի նորա Փոգովր. և անուն կնոջ նորա Մետաբեէլ. դուստր Մատրեթեայ. որդւոյ Մայեզոբայ։ *Այս են անուանք որդւոցն 40 Եսաւայ. և իշխանացն Եսաւայ յազգս իւրեանց. ըստ տեղիս իւրեանց. յաշխարհս իւրեանց. և ՚ի տոհմս իւրեանց. ըստ անուանց նոցա։ իշխան Թամնայ. իշխան Գոտան. իշխան Յեթաթ։ *Իշխան Ողիբամայ. իշխան Հեղայ. իշ_ 41 խան Փենոն։ *Իշխան Կենեզ. իշխան 42 Թեման. իշխան Մազար։ *Իշխան Մա 43 գեդիէլ. իշխան Զափոյին. սոքա են իշխանք Եդովմայեցւոց. ըստ բնակութե յերկրի ստացուածոց իւրեանց. և այս է Եսաւ հայր Եդովմայեցւոց։

## ԳԼ: ԼԷ:

Եւ բնակէր Յակոբ յերկրին՝ ուր 1 պանդխտեցաւ հայր նորա՝ յերկրին Քանանացւոց։*Եւ այս են ծնունդք 2 Յակոբայ։ Յովսէփ եօթնևտասնամեայ էր, մինչ արածէր եղբարբքն հանդերձ խաշինս։ և էր կրտսեր ընդ որդիսն Բաղղայ. և ընդ որդիսն Զեղփայ կանանց հօր իւրոյ. և բերէին համբաւ չար զՅովսեփայ առ Իսրայէլ հայր իւրեանց։*Բայց Իսրայէլ սիրէր զՅովսէփ 3 առաւել քան զամենայն որդիսն իւր. քանզի որդի ծերութե էր նորա։ և արար նմա պատմուճան ծաղկեայ։ *Իբրև տեսին եղբարք նր թէ սիրէ 4 զնա հայրն քան զամ որդիս իւր, ատեցին զնա. և ոչ կարէին խօսել ինչ ընդ նմա խաղաղութե։*Ետես երազ Յովսէփ՝ 5 և պատմեաց եղբարց իւրոց. և յաւելին ևս ատել զնա։ *Եւ ասէ ցնս. լուա_ 6 րուք զերազն. զոր տեսի։ *Թուէր 7 եթէ որայ կապէաք ՚ի դաշտի միում։



կանգնեցաւ որայն իմ. եկաց ուղղորդ. և դարձան որայքն ձերև պագին երկիր իմոյ որայոյս։ *Եւ ասեն 8 ցնա եղբարքն իւր. մի թէ թագաւորելով թագաւորեսցես ՚ի վերայ մեր. կամ տիրելով տիրեսցես մեզ. և յաւելին ևս ատել զնա վս երազոցն նորա. և վասն բանիցն նորա։ *Եւ ետես 9 միւս ևս երազ. և պատմեաց հօր իւրում և եղբարց իւրոց։ և ասէ. ահա տեսանէի միւս ևս այլ երազ. որպէս թէ արեգակն՝ և լուսին՝ և մետասան աստեղք երկիր պագանէին ինձ։ *Պատմեաց նմա հայրն իւր՝ և ասէ. 10 զինչ է երազն՝ զոր տեսեր։ արդ գալով գայցեմք ես և մայր քո՝ և եղբարք քո. և երկիրպագանիցեմք քեզ։ *Եւ նախանձեցան ընդ նմա եղբարքն 11 իւր. բայց հայրն պահէր զբանսն։ *Եւ գնացին եղբարք նորա արածել 12 զխաշինս հօրն իւրեանց ՚ի Սիւքեմ։ *Եւ ասէ Իսրայէլ ցՅովսէփ. ոչ աւա_ 13 նիկ եղբարք քո արածեն զխաշինսն ՚ի Սիւքեմ. եկ առաքեցից զքեզ առ նոսա։*Եւ ասէ ցնա. ահաւասիկ ես։ 14 ասէ ցնա Իսրայէլ. երթ՝ և տես եթէ ողջ իցեն եղբարքն քո՝ և խաշինք. և բեր ինձ զրոյց. Եւ առաքեաց զնա ՚ի ծործորոյն Քեբրոնի. եկն ՚ի Սիւքեմ։ *Եւ եգիտ զնա այր մի մոլորեալ ՚ի 15 դաշտին։ եհարց ցնա այրն՝ և ասէ. զինչ խնդրես։*Եւ նա ասէ. զեղբարս 16 իմ խնդրեմ. պատմեա ինձ, ուր արածիցեն։*Եւ ասէ ցնա այրն. բարձին 17 աստի. և լուայ՝ զի ասէին. երթիցուք ՚ի Դովթայիմ։ և գնաց Յովսէփ զհետ եղբարցն իւրոց. և եգիտ զնոսա ՚ի Դոթայիմ։*Տեսին զնա եղբարքն յառա 18 ջագոյն ՚ի հեռաստանէ. մինչև մօտ եկեալ էր առ նոսա՝ զխորհուրդ վատ ՚ի մէջ առին սպանանել զնա։*Եւ ա_ 19 սեն իւրաքանչիւր ցեղբայր իւր. ահա երազատեսն գայ։ *Եկայք սպան_ 20 ցուք զնա. և ընկեսցուք ՚ի մի ՚ի գբոց աստի. և ասասցուք, եթէ գազան չար եկեր զնա. և տեսցուք՝ զինչ լինիցին երազքն նորա։ *‖Իբրև լուաւ Ռու_ 21 բէն. կորզեաց զնա ՚ի ձեռաց նոցա։ *Եւ ասէ. մի հարցուք զդա յոգի։ և 22 ասէ ցնոսա Ռուբէն. մի հեղուցուք զարիւն. այլ արկէք զնա ՚ի գուբ մի յանապատի աստ. և ձեռն մի արկանէք ՚ի նա։ զայս ասէր, զի թափիցէ զնա ՚ի ձեռաց նոցա. և հասուցանիցէ զնա առ հայր իւր։ *Եւ եղև իբրև եկն Յովսէփ առ 23 եղբարսն իւր. մերկացին զպատմուճանն նորա ծաղկեայ ՚ի նմանէ։ *Եւ 24 առին ընկեցին զնա ՚ի գուբն. և գուբն

‖ Ծնն. 42.22.

ունայն էր․ և ջուր ոչ գոյր 'ի նմա ։ 25 *Եւ՛ նստան ուտել զհաց ։ զաչս'ի վեր բարձեալ տեսին․ և ահա ճանապարհորդք իսմայելացիք գային 'ի գաղաադէ․ և ուղտք նոցա լի էին խնկօք․ ստաշխամբք․ և ռետինիւ․ և երթային իջուցանել յեգիպտոս ։ 26 *Եւ ասէ յուդա ցեղբարսն իւր․ զի՞նչ օգուտ է եթէ սպանանիցեմք զեղբայրն մեր․ և թաքուցանիցեմք զարիւն նորա ։



27 *Եկա՛յք վաճառեսցո՛ւք զնա իսմայելացւոցն․ և ձեռք մեր մի՛ շաղախեսցին 'ի նմա․ զի եղբայր և մարմին մեր է ։ և լուա՛ն նմա եղբարքն իւր ։ 28 *‖Եւ՛ անցանէին արք մադիանացիք՝ վաճառականք․ և ձգեցին հանին զյովսէփ 'ի գբոյ անտի․ և վաճառեցին զյովսէփ իսմայելացւոցն քսան դահեկանի ։ 29 *Եւ իջուցին զյովսէփ յեգիպտոս․ դարձաւ ռուբէն 'ի գուբն․ և ոչ եգիտ զյովսէփ 'ի գբի անդ ։ 30 *Պատառեաց զհանդերձս իւր․ և դարձաւ առ եղբարսն իւր՝ և ասէ․ պատանեակն չէ՛ անդ․ և ես արդ յո՞ երթայց ։ 31 *Եւ՛ առեալ զպատմուճանն յովսէփայ՝ զենին զուլ այծեաց․ և թաթաւեցին զպատմուճանն յարեանն ։ 32 *Եւ՛ առաքեցին զպատմուճանն ծաղկեայ տանել առ հայրն իւրեանց՝ և ասեն․ զայդ գտաք․ ծանի՛ր եթէ որդւոյ քոյ իցէ պատմուճանդ․ և եթէ ոչ ։ 33 *Եւ ծանեաւ զնա՝ և ասէ․ պատմուճան որդւոյ իմոյ է․ գազան չար եկեր զնա․ գազան յափշտակեաց զյովսէփ ։ 34 *Եւ՛ պատառեաց զհանդերձս իւր․ և քուրձ զգեցաւ 'ի վերայ միջոյ իւրոյ․ և սուգ ունէր 'ի վերայ որդւոյն իւրոյ աւուրս բազումս ։ 35 *Եւ ժողովեցան ա̃մ ուստերք նորա՝ և ա̃մ դստերք․ և եկին մխիթարել զնա․ և ո՛չ կամէր մխիթարիլ․ ասէ, զի իջից ես առ վին սգով առ որդի իմ'ի դժոխս․ և ելաց զնա հայրն իւր ։ 36 *Իսկ մադիանացիքն վաճառեցին զյովսէփ յեգիպտոս պետափրեայ ներքինւոյ․ դահճապետի փարաւոնի ։

‖ Իմաս. 10.13. Սաղմ. 104.17.

## Գլ ։ ԼԸ ։

1 Եւ՛ եղև 'ի ժամանակի յայնմիկ, էջ յուդա յեղբարց իւրոց․ և չոգաւ առ ոմն ոդողոմացի, որում անուն էր իրաս ։ 2 *Եւ ‖ետես անդ յուդա զդուստր առն քանանացւոյ, որում անուն էր շաւայ․ և էառ զնա իւր կին․ և եմուտ առ նա ։ 3 *Որ յղացաւ, և ծնաւ որդի․ և կոչեաց զանուն նորա՝ էր ։ 4 *Եւ ‖յղացաւ դարձեալ․ ծնաւ որդի․ և կոչեաց զանուն նորա օնան ։ 5 *Եւ՛ յաւել՝ դարձեալ ծնաւ որդի․ և կոչեաց զանուն նորա սելոմ․ և նա էր 'ի քասբի՝ յորժամ ծնաւ զնոսա ։ 6 *Եւ էառ յուդա կին էրայ անդրանկի իւրում․ որում անուն էր թամար ։ 7 *Եւ՛ ‖ եղև էր անդրանիկն յուդայ չար առաջի Տ՟ն․ և սպան զնա Ա՟ծ ։ 8 *Եւ ասէ յուդա ցօնան․ մուտ առ կին եղբօր քոյ․ և ամուսնասցիս ընդ նմա․ և յարուսցես զաւակ եղբօր քում ։ 9 *Եւ՛ իբրև գիտաց օնան եթէ ոչ լինի նմա զաւակն․ լինէր յորժամ՝ մտանէր առ կին եղբօր իւրոյ, հեղոյր զսերմն յերկիր․ չտալ զաւակ եղբօր իւրում ։ 10 *Եւ չար թուեցաւ առաջի Ա՟յ գործն՝ զոր արար․ սպան և զնա ևս ։ 11 *Եւ՛ ասէ յուդա ցթամար ցնու իւր․ նիստ այրի 'ի տան հօր քոյ՝ մինչև եղիցի մեծ սելոմ որդի իմ․ զի ասէր՝ թէ գուցէ և նա ևս մեռանիցի․ որպէս և եղբարքն նր․ գնաց թամար՝ և նստաւ 'ի տան հօր իւրոյ ։ 12 *Բազմացան աւո՛ւրքն․ և մեռաւ դուստր շաւայ կին յուդայ․ մխիթարեցաւ յուդա՝ և գնաց 'ի կտուրս խաշանց իւրոց՝ ինքն և իրաս հովի՛ւ իւր ոդողոմացի 'ի թամնայ ։ 13 *Ազդ եղև թամարայ նուոյ նորա՝ և ասեն․ ահա սկեսրայր քո ելանէ 'ի թամնայ՝ կտրել զխաշինս իւր ։ 14 *Եւ՛ եհան զհանդերձս այրութեան իւրոյ յինքենէ ։ արկաւ տեռ՝ և զարդարեցաւ․ և նստաւ առ դրան էնանու յանցս թամնայ․

‖ Ա. Մն. 2. 3.

‖ Թուոց 26.19.

իւր․

‖ Թուոց 26.19.

Թամարայ. զի ետես եթէ մեծ եղեւ սե֊ղոմ. եւ նա ոչ տայր զնա նմա կին։ *Իբրեւ ետես զնա յուդա՝ համարեցաւ 15 թէ բոզ իցէ. քանզի ծածկեալ էր զե֊րեսս իւր՝ եւ ոչ ծանեաւ զնա։ *Խո֊ 16 տորեցաւ առ նա ՚ի ճանապարհէ ան֊տի՝ եւ ասէ. թո՛յլ տուր ինձ մտանել առ քեզ. զի ոչ ծանեաւ թէ նու նորա իցէ։ Եւ նա ասէ. զի՞նչ տացես ինձ ե֊թէ մտանիցես առ իս։ *Եւ ասէ՝ ես 17 տաց ածել քեզ ուլ այծեաց ՚ի խա֊շանց իմոց։ Եւ նա ասէ. թէ տաս գրաւ֊ական, մինչեւ տացես ածել։ *Եւ նա 18 ասէ՝ զի՞նչ գրաւական տաց քեզ. եւ ասէ՝ զմատանիդ, եւ զգինդ. եւ զգա֊ւազանդ, որ ՚ի ձեռին քում. եւ եմուտ առ նա. եւ յղացաւ ՚ի նմանէ։ *Եւ 19 յարեաւ գնաց՝ եւ եհան ՚ի բաց զձորձս իւր յինքենէ. եւ զգեցաւ զհանդերձս այրութե իւրոյ։ *Եւ առաքեաց յու֊ 20 դա ուլ այծեաց ՚ի ձեռն հովուին իւրոյ ոդողոմացւոյ առնուլ զգրաւա֊կանն ՚ի կնոջէ անտի, եւ ոչ եգիտ զնա։ *Եհարց զարս տեղւոյն՝ եւ ասէ ցնո֊ 21 սա. ո՞ւր է բոզն. որ էր յենան ՚ի վե֊րայ ճանապարհին։ *Եւ ասեն. չէր 22 աստ ուրեք բոզ։ Եւ դարձաւ առ յու֊դա. եւ ասէ՝ ո՛չ գտի. եւ արք տեղւոյն ասեն՝ թէ չիք աստ բոզ։ *Ասէ յու֊ 23 դա. նմա լիցի այն. այլ զի մի՛ ծաղր կայցուք. ես ետու տանիլ զուլդ. եւ դու ոչ գտեր։ *Եւ եղեւ յետ երից 24 ամսոյ. ազդ եղեւ յուդայ՝ եւ ասեն. պոռնկեցաւ նու քո թամար. եւ ահա յղի է ՚ի պոռնկութենէ։ Եւ ասէ յու֊դա. հանէք զնա արտաքս, եւ այրեսցի։ *Եւ մինչդեռ տանէին զնա. առա֊ 25 քեաց առ սկեսրայրն իւր, եւ ասէ. յառ֊նէ, ոյր այդ գրաւականք են՝ յղի եմ ես։ Եւ ասէ՝ ծանի՛ր, ոյր իցէ մատա֊նիդ՝ եւ գինդ՝ եւ գաւազանդ։ *Ծա֊ 26 նեաւ յուդա՝ եւ ասէ. արդարացեալ է նա քան զիս. զի ոչ ետու զնա որդւոյ իմում սեղոմայ։ Եւ ոչեւս յաւել գիտել զնա։ *Եւ ∥ եղեւ իբրեւ ծնանէր. եւ 27 էին երկու որդիք յորովայնի նորա։ Եւ եղեւ ՚ի ժամանակի ծննդեան նորա. մին յառաջագոյն եհան զձեռն իւր. եւ էառ ծնուցիչն՝ կապեաց կարմիր ՚ի ձեռին նր։ *Եւ ասէ, նախ սա եկես֊ 28 ցէ։ *Իբրեւ ամփոփեաց զձեռն անդ֊ 29 րէն. ելին եւ վաղվաղակի եղբայրն նորա։ Եւ նա ասէ. զի՞ է զի խրամատե֊ցաւ վասն քո ցանգ. եւ կոչեաց զանուն նորա փարէս։ *∥Եւ յետոյ ելին եւ 30 եղբայրն նորա. յորոյ ձեռին կապեալ էր զկարմիրն։ Եւ կոչեաց զանուն նո֊րա զարա։

∥ Մատ. 1. 3.

∥ Ա. Մն. 2. 4.

## Գլ. ԼԹ.

1 Եւ զՅովսէփ իջուցին յեգիպտոս. եւ գնեաց զնա պետափրէս ներ֊քինի փարաւոնի դահճապետ, այր եգիպտացի, ՚ի ձեռաց իսմայելացւոցն. 2 որք իջուցին զնա անդր։ *Եւ էր Տր ընդ յովսեփայ. եւ էր յաջողակ։ Եւ եղեւ ՚ի տան տեառն իւրոյ յեգիպտոս։ 3 *Իբրեւ գիտաց տէրն նորա՝ թէ Տր ընդ նմա է. եւ զամ զինչ եւ առնէր՝ 4 Տր յաջողէր ՚ի ձեռս նորա։ *Եւ ե֊գիտ յովսէփ շնորհս առաջի տեառն իւրոյ. զի հաճոյ էր նմա։ Եւ կացոյց զնա ՚ի վերայ տան իւրոյ. եւ զամենայն ինչ՝ որ իւր էր, ետ ՚ի ձեռս յովսեփայ։ Եւ եղեւ յետ կացուցանելոյ զնա ՚ի վե֊րայ տան իւրոյ՝ եւ ՚ի վերայ ամենայն 5 իրի. որ ինչ էր նորա։ *Եւ օրհնեաց Տր զտուն եգիպտացւոյն վասն յովսե֊փայ։ Եւ եղեւ օրհնութի Տն ՚ի վերայ ամ ընչից նր. ՚ի տան եւ յանդի։ Եւ եթող զամ, որ ինչ իւր էր, ՚ի ձեռս 6 յովսեփայ։ *Եւ ոչ գիտէր զամ, որ ինչ կայր ՚ի տան իւրում. բայց միայն զհացն, զոր ուտէր։ Եւ էր յովսէփ գեղեցիկ երեսօք. եւ գեղեցիկ տեսլեամբ յոյժ։ 7 *Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ, էարկ կին տեառն իւրոյ զաչս իւր ՚ի վերայ յովսեփայ. եւ ասէ ցնա՝ քուն եա՛ ընդ իս։ 8 *Եւ նա ոչ կամեցաւ։ Եւ ասէ ցկին տեառն իւրոյ. զի եթէ տէր իմ ոչ ճանաչէ ինչ ՚ի տան իւրում վն իմ։ 9 *Եւ զամ ինչ ետ ՚ի ձեռս իմ. եւ չի՛ք ինչ՝ որ մեծ է քան զիս. եւ չիք ինչ զա֊տեալ յինէն բաց ՚ի քէն՝ զի կին նորա ես. եւ զի՞արդ առնիցեմ զբանդ զայդ զչար եւ զմեծ. եւ մեղանչիցեմ առաջի 10 Այ։ *Եւ եղեւ իբրեւ խօսէր ընդ յովսեփայ օրըստօրէ. եւ ոչ անսայր քունել ընդ նմա. եւ ոչ հաւաք լինել։ 11 *Եղեւ օր ինչ այսպիսի. մտեալ յո֊սէփ ՚ի տունն գործել զգործ ինչ իւր. եւ ոչոք էր անդ յընտանեաց անտի ՚ի 12 ներքս։ *Բուռն եհար զձորձոյ նր, եւ ասէ. ննջեա՛ ընդ իս. եւ նորա թողեալ զձորձս իւր ՚ի ձեռս նր, եւ փախեաւ՝ 13 ել արտաքս։ *Եւ եղեւ՝ իբրեւ ետես, եթէ եթող զձորձս իւր ՚ի ձեռս նորա, 14 եւ փախեաւ՝ ել արտաքս։ *Կոչեաց զընտանիս տանն՝ եւ ասէ. տեսէք. զի էած մեզ ծառայ եբրայեցի, խաղ առնել զմեզ. եմուտ առ իս՝ եւ ասէ. ննջեա՛ ընդ իս. եւ ես աղաղակեցի ՚ի 15 ձայն բարձր։ *Եւ իբրեւ լուաւ թէ մեծաբարբառ աղաղակեցի. եթող զձորձս իւր առ իս, եւ փախեաւ՝ ել ար֊ 16 տաքս։ *Եւ եդ զձորձն առ իւր՝

մինչեւ

մինչև եկն տէրն 'ի տուն իւր։ Եւ խօսեցաւ ընդ նմա ըստ բանիցս այսոցիկ։ 17 * Եւ ասէ՝ եմուտ առ իս ծառայն եբրայեցի՝ զոր ածեր մեզ՝ խաղ առնել զիս։ Եւ ասէ ցիս՝ ննջեմ ընդ քեզ։ 18 * Իսկ իբրև լուաւ թէ բարձրացուցի զբարբառ իմ, և աղաղակեցի․ եթող զձորձս իւր յիս, և փախեաւ՝ ել արտաքս։ 19 * Եւ եղև՝ իբրև լուաւ տէրն նորա զբանս կնոջն իւրոյ, զոր խօսեցաւ ը̃ն նմա՝ և ասէ, թէ այսպէս արար ընդ իս ծառայն քո․ բարկացաւ սրտմտութ̃բ։ 20 * Եւ եհառ տէրն յովսէփայ՝ ‖ եարկ զնա 'ի բանտ՝ 'ի տեղին ուր կալանաւորքն արքունի կապեալք կային 'ի բանտին։ 21 * Եւ էր Տ̃ր ընդ յովսէփայ․ և եարկ զնովաւ ողորմութի․ և ետ նմա շնորհս առաջի բանտապետին։ 22 * Եւ ետ բանտապետն զբանտն 'ի ձեռս յովսէփայ․ և զա̃մ կապանաւորս որք էին 'ի բանտի անդ․ և զա̃մ զոր ինչ գործէին անդ, նա էր, որ գործէր։ 23 * Եւ ոչ ինչ գիտէր բանտապետն զբանտին վասն նորա․ զի ամենայն 'ի ձեռս յովսէփայ էր․ քանզի Տ̃ր էր ընդ նմա․ և զոր ինչ գործէր նա, Տ̃ր յաջողէր 'ի ձեռս նորա։

‖ Սաղմ. 104.18.

## Գլ. Խ։

1 Եւ եղև յետ բանիցս այսոցիկ յանցեաւ տակառապետ արքային եգիպտացւոց, և մատակարար, տ̃ն նոցա արքային եգիպտացւոց։ 2 * Եւ բարկացաւ փարաւոն 'ի վերայ երկուց ներքինեաց իւրոց․ և 'ի վերայ տակառապետին․ և 'ի վ̃ր մատակարարին։ 3 * Եւ եդ զնոսա 'ի բանտի առ դահճապետին․ յայնմ բանտի՝ 'ի տեղւոջ ուր յովսէփն կայր։ 4 * Եւ յանձն արար զնոսա դահճապետն յովսէփայ։ և կայր ն̃ց 'ի սպասու․ և էին աւուրս ինչ 'ի բանտի անդ։ 5 * Եւ տեսին երազ երկոքին․ զիւրաքանչիւր երազ 'ի միում գիշերի։ տեսիլ երազոյ տակառապետին և մատակարարին․ որք էին արքային եգիպտացւոց, մինչ էին 'ի բանտի անդ։ 6 * Եմուտ առ նոսա յովսէփ ընդ առաւօտն․ և ետես զնոսա՝ և էին խռովեալք։ 7 * Եհարց ցներքինիսն փարաւոնի․ որք էին ընդ նմա 'ի բանտի անդ առ տեառն նորա՝ և ասէ․ ընդէ՞ր տրտում են երեսք ձեր այսօր։ 8 * Եւ նոքա ասեն ցնա․ երազ տեսաք, և ոչոք է որ մեկնիցէ զնա մեզ։ և ասէ ցնոսա յովսէփ․ ո՛չ ապաքէն 'ի ձեռն Ա̃յ իցէ մեկնութի նոցա․ պատմեցէք ինձ։ 9 * Եւ պատմեաց տակառապետն զերազ իւր յովսէփայ՝ և ասէ։ Թուէր ինձ 'ի տեսլեան իմում, որթ մի առաջի իմ։ 10 * Եւ յորթն երեք ուռք կանաչք յոյժ․ և ունէր երիս ողկոյզս, հասեալ ողկոյզս խաղողոյ։ 11 * Եւ բաժակն փարաւոնի 'ի ձեռին իմում․ առնուի զխաղողն․ և ճմլէի 'ի բաժակն փարաւոնի՝ և տայի զբաժակն 'ի ձեռս փարաւոնի։ 12 * Եւ ասէ ցնա յովսէփ․ այս է մեկնութի նորա․ երեք ուռքն երեք աւուրք են։ 13 * Դեռ ևս երեք աւուրք․ և յիշեսցէ փարաւոն զիշխանութիւն քո․ և անդրէն 'ի նմին տակառապետութեան քում կացուսցէ և տացես զբաժակն փարաւոնի 'ի ձեռս նորա․ ըստ առաջնոյ իշխանութեան քոյ․ որպէս և էիր տակառապետ։ 14 * Դեռ զիս յիշեսջիր յորժամ բարի լինիցի քեզ․ և արասցես ինձ ողորմութի․ և յիշեսցես զիս առաջի փարաւոնի․ և հանցես զիս 'ի բանտէ աստի յայսմանէ։ 15 * Զի գողանալով գողացան զիս յերկրէն եբրայեցւոց․ և աստ ոչինչ արարի․ և արկին զիս 'ի տուն գբոյս այսորիկ։ 16 * Իբրև ետես մատակարարն թէ ուղիղ մեկնեաց։ ասէ ցյովսէփ․ և ես տեսանէի յերազի՝ թուէր ինձ, թէ երիս խանս նաշհոյ ունէի 'ի գլուխ իմ։ 17 * Եւ 'ի վերնում խանին յամենայնէ զոր ուտէր արքայ փարաւոն՝ գործ մատակարարաց․ և թռչունք ուտէին զնա 'ի խանէ անտի․ 18 որ էր 'ի վ̃ր գլխոյ իմոյ։ * Պատասխանի ետ յովսէփ՝ և ասէ ցնա։ այս է մեկնութի ն̃ց․ երեք խանքն, երեք աւուրք են։ 19 * Յետ երից աւուրց բարձցէ փարաւոն զգլուխ քո 'ի քէն, և կախեսցէ զքեզ զփայտէ․ և կերիցեն թռչունք երկնից զմարմինս քո 'ի քէն։ 20 * Եւ եղև յաւուրն երրորդի, օր ծննդոց էր փարաւոնի․ և առնէր ուրախութիւն ա̃մ ծառայից իւրոց․ և յիշեաց զիշխանութի տակառապետին․ և զիշխանութի մատակարարին 'ի մէջ ծառայից իւրոց։ 21 * Եւ կացոյց զտակառապետն անդէն յիշխանութե իւրում․ և ետ զբաժակն 'ի ձեռն փարաւոնի 22 * Եւ զմատակարարն կախեաց զփայտէ, որպէս և մեկնեացն յովսէփ։ 23 * Եւ ոչ յիշեաց տակառապետն զյովսէփ․ այլ մոռացաւ զնա։

## Գլ. ԽԱ։

1 Եւ եղև յետ երկուց ամաց՝ ետես փարաւոն երազ։ Թուէր թէ կայցէ առ եզր գետոյ։ 2 * Եւ ահա ո̃ր թէ 'ի գետոյ անտի ելանէին եօթն երինջք գեղեցիկք տեսլեամբ․ և ընտիրք մարմնով․ և արածէին 'ի խայլի անդ։

անդ ։ 3 * Եւ այլ ևս եօթն երինջք ելանէին յետ նոցա 'ի գետոյ անտի · զազիրք տեսլեամբք · և վտիտք մարմնովք՝ և արածէին առ այլ երնջովքն առ եզեր գետոյն ։ 4 * Եւ ուտէին եօթն երինջքն զազիրք տեսլեամբ և վտիտք մարմնովք · զեօթն երինջսն զգեղեցիկս տեսլեամբ և զընտիրս · զարթեաւ փարաւոն ։ 5 * Եւ անդրէն 'ի քուն եմուտ · և ետես երազ երկրորդ ։ և ահա եօթն հասկք ելանէին 'ի միում փնջի՝ ընտիրք և գեղեցիկք ։ 6 * Եւ ահա եօթն այլ հասկք սինք և խորշակահարք ելանէին յետ նոցա ։ 7 * Եւ կլանէին սինքն զեօթն հասկսն՝ զընտիրս և զատոքս ։ զարթեաւ փարաւոն · և էր երազ ։ 8 * Եւ եղև առաւօտ, և խռովեցաւ անձն նորա · և առաքեաց կոչեաց զամենայն երազահանսն եգիպտոսի · և զամենայն իմաստունս նորա ։ և պատմեաց փարաւոն զերազն իւր ։ և ոչոք էր՝ որ մեկնէր զերազն փարաւոնի ։ 9 * Եւ խօսեցաւ տակառապետն առաջի փարաւոնի՝ և ասէ ։ զյանցանս իմ յիշեցուցանեմ այսօր ։ 10 * Բարկացաւ փարաւոն ծառայից իւրոց · և եդ զմեզ 'ի բանտի 'ի տան դահճապետին · զիս՝ և զմատակարարն ։ 11 * Եւ տեսաք երկոքեան երազ 'ի միում գիշերի՝ ես և նա · իւրաքանչիւր ըստ երազոյ իւրում՝ տեսանէաք ։ 12 * Եւ էր անդ ընդ մեզ պատանի մի մանուկ եբրայեցի · ծառայ դահճապետին ։ և պատմեցաք նմա ։ 13 * Եւ մեկնեաց մեզ զերազսն մեր՝ առն ըստ իւրաքանչիւր երազոյ մեկնեաց · և եղև՝ որպէս և մեկնեացն մեզ, նոյնպէս և պատահեցաւ ։ ինձ գալ հասանիլ յիշխանութիւն · և նմա կախիլ զփայտէ ։ 14 * ‖ Առաքեաց փարաւոն և կոչեաց զյովսէփ ։ և հանին զնա 'ի բանտէ անտի · և փոքրեցին զհերս նորա՝ և փոխեցին զպատմուճան նորա · և եկն առաջի փարաւոնի ։

‖ Սաղմ. 104.20.

15 * Եւ ասէ փարաւոն ցյովսէփ՝ զերազ տեսի՝ և չիք ոք՝ որ մեկնէ զնա · բայց ես լուայ զքէն · ասեն, եթէ լսես զերազս՝ մեկնես ։ 16 * Պատասխանի ետ յովսէփ և ասէ ցփարաւոն ։ առանց Աստուծոյ ոչ լինիցի պատասխանի փրկութեան փարաւոնի ։ 17 * Խօսեցաւ փարաւոն ընդ յովսէփայ՝ և ասէ · թուէր 'ի տեսլեան իմում · եթէ կայի առ եզեր գետոյ ։ 18 * Եւ որպէս թէ 'ի գետոյ անտի ելանէին եօթն երինջք ընտիրք մարմնօք · և գեղեցիկք տեսլեամբ՝ և արածէին 'ի խաղի անդ ։ 19 * Եւ ահա այլ ևս եօթն երինջք ելանէին զկնի նոցա 'ի գետոյ անտի, դժնդակք և զազիրք տեսլեամբ յոյժ՝ և վտիտք մարմնօք · որպիսի ոչ տեսի յամենայն երկրին եգիպտացւոց զազրագոյնս քան զնոսա ։ 20 * Եւ ուտէին եօթն երինջքն վտիտք և զազիրք զեօթն երինջս զառաջինս՝ զգեղեցիկս և զընտիրս ։ 21 * Եւ մտանէին յորովայնս նոցա, և ոչ երևէին · և երեսք նոցա զազիրք իբրև զառաջինն ։ զարթեայ՝ և դարձեալ ննջեցի ։ 22 * Եւ տեսանէի միւսանգամ յերազի · որպէս թէ եօթն հասկք ելանէին 'ի միում՝ փնջի՝ լիք և գեղեցիկք ։ 23 * Եւ այլ եօթն հասկք ապականեալք, աղազունք և խորշակահարք ելանէին մօտ առ նոսա ։ 24 * Եւ կլանէին եօթն հասկքն աղազունք և խորշակահարք զեօթն հասկսն՝ զգեղեցիկս և զատոքս ։ և պատմեցի երազահանացն · և ոչոք էր՝ որ մեկնէր ինձ ։ 25 * Եւ ասէ յովսէփ ցփարաւոն · երազն փարաւոնի մի է ։ զոր ինչ Աստուած առնելոց է՝ եցոյց փարաւոնի ։ 26 * Եօթն երինջքն գեղեցիկք՝ եօթն ամք են · և եօթն հասկքն գեղեցիկք՝ եօթն ամք են ։ երազն փարաւոնի մի է ։ 27 * Եւ եօթն երինջքն տգեղք և վտիտք, որք ելանէին զհետ նոցա · եօթն ամք են · և եօթն հասկքն սինք և խորշակահարք · լիցի զեօթն ամ սով ։ 28 * Բանն զոր ասացի փարաւոնի, այն է ։ զոր ինչ Աստուած առնելոց է, եցոյց փարաւոնի ։ 29 * Ահա ամք եօթն եկեսցեն բազում լիութեան, յամենայն երկրին եգիպտացւոց ։ 30 * Եւ յետ այնորիկ եկեսցէ եօթն ամ սովու · և մոռասցին զլիութիւն յամենայն երկրին եգիպտացւոց ։ և սպառեսցէ սովն զերկիր ։ 31 * Եւ ոչ ծանիցի լիութիւնն յերեսաց սովուն, որ գալոց է յետ այնորիկ · քանզի սաստիկ լինիցի յոյժ ։ 32 * Այլ վասն կրկնելոյ երազոյն փարաւոնի երկիցս անգամ · զի ճշմարիտ է բանն առ յԱստուծոյ · և փութասցի Աստուած առնել զնա ։ 33 * Եւ արդ՝ տես խնդրեա այր մի իմաստուն և խորհրդական փարաւոնի · և կացուսցես զնա 'ի վերայ երկրին եգիպտացւոց ։ 34 * Եւ արասցէ՝ և կացուսցէ գործակալս փարաւոն 'ի վերայ երկրին ։ և հնգերորդեսցեն զարմտիս երկրին եգիպտացւոց · զեօթն ամացն լիութեան ։ 35 * Եւ ժողովեսցեն զամենայն կերակուրս՝ զեօթն ամացն բարեաց եկելոց · և ժողովեսցի ցորեան ընդ ձեռամբ փարաւոնի · և կերակուրք 'ի քաղաքս պահեսցին ։ 36 * Եւ եղիցին կերակուրքն պահեալ երկրին յեօթն ամս սովուն · որք լինիցին յերկրին եգիպտացւոց · և մի սատակեսցի երկիր

կիր

կերս 'ի սովու։ *Եւ հաճոյ թուեցան բանքն առաջի փարաւոնի, և առաջի ամենայն ծառայից իւրոց։ 38 *Եւ ասէ փարաւոն ցամենայն ծառայս իւր. մի՞ թէ գտանիցեմք այր այնպիսի՝ որ ունիցի զոգի Ա՟Յ յանձին իւրում։ 39 *Եւ ասէ փարաւոն ցյովսէփ. որովհետև եցոյց քեզ Ա՟Ծ զայդ ամենայն. չիք այր իմաստնագոյն, և խորհրդական քան զքեզ։ 40 *‖ Դու լիցիս 'ի վ՟ր տան իմոյ. և բերանոյ քում հնազանդ լիցի ա՟մ ժողովուրդ իմ. բայց միայն աթոռովս 'ի վերոյ եղէց ես քան զքեզ։ 41 *Եւ ասէ փարաւոն ցյովսէփ. ահաւասիկ կացուցի զքեզ այսօր 'ի վերայ երկրիս եգիպտացւոց։ 42 *Եւ հանեալ փարաւոնի զմատանին իւր 'ի ձեռանէ իւրմէ, եդ 'ի ձեռն յովսէփայ. և զգեցոյց նմա պատմուճան բեհեղեայ. և եարկ մանեակ ոսկի 'ի պարանոց նորա։ 43 *Եւ եհան զնա յերկրորդ կառս իւր. և քարոզ կարդայր առաջի նորա։ և կացոյց զնա 'ի վերայ երկրին եգիպտացւոց։ 44 *Եւ ասէ փարաւոն ցյովսէփ. ահաւասիկ ես փարաւոն. առանց քո ոչոք համբարձցէ զձեռս իւր և զոտս իւր, 'ի վերայ ա՟մ երկրիս եգիպտացւոց։ 45 *Եւ կոչեաց փարաւոն զանուն յովսէփայ, փոմփթոմփանէ. և ետ նմա զասանէթ դուստր պետափրեայ քրմի արեգ քաղաքի կնութե՟ն. և ել յովսէփ յերեսաց փարաւոնի։ 46 *Եւ էր յովսէփ ամաց երեսնից, յորժամ ընծայեցաւ առաջի փարաւոնի, արքային եգիպտացւոց. ել յովսէփ յերեսաց փարաւոնի. և շրջեցաւ ընդ ամենայն եգիպտոս։ 47 *Եւ արար երկիրն յեօթն ամս լիութեան արդիւնս։ 48 *Եւ ժողովեաց զամենայն կերակուրս ամացն եօթանց. յորս էր լիութի՟ն յերկրին եգիպտացւոց՝ և համբարեաց կերակուրս 'ի քաղաքս. զկերակուրս դաշտաց քաղաքին. որք շուրջ զնովաւ։ 49 *Եւ համբարեաց 'ի նմա. և ժողովեաց յովսէփ ցորեան իբրև զաւազ ծովու բազում յոյժ. մինչև ոչ կարէր համարել. քանզի ոչ գոյր թիւ։ 50 *Եւ ‖ եղեն յովսէփու երկու որդիք. մինչչև եկեալ էր եօթն ամացն սովու. զորս ծնաւ նմա ասանէթ դուստր պետափրեայ քրմի, արեգ քաղաքի։ 51 *Եւ կոչեաց յովսէփ զանուն անդրանկանն մանասէ. զի ասէ՝ թէ մոռացոյց ինձ Ա՟Ծ զամենայն վիշտս իմ. և զա՟մ վիշտս հօր իմոյ։ 52 *Եւ զանուն երկրորդին կոչեաց եփրեմ. զի ասէ՝ թէ աճեցոյց զիս Ա՟Ծ յերկրի տառապանաց իմոց։

‖ Սաղմ. 104.21. Ա. Մակ. 2.53. Գործ. 7.10.

‖ Ի վայր. 46.20. և 48.6.

53 *Եւ անցին եօթն ամք լիութեանն. որք եղեն յերկրին եգիպտացւոց։ 54 *Եւ ‖ սկսան գալ եօթն ամք սովոյն. որպէս և ասաց յովսէփ։ և եղև սով յա՟մ երկրին. զի յամենայն երկրին եգիպտացւոց ո՛չ գտանիւր հաց։ 55 *Եւ սովեցաւ ա՟մ երկիրն եգիպտացւոց։ և աղաղակեաց ամենայն ժողովուրդն առ փարաւոն, վասն հացի։ և ասէ փարաւոն ցա՟մ եգիպտացիսն, երթա՛յք առ յովսէփ. և զոր ինչ ասիցէ ձեզ, արասջիք։ 56 *Եւ էր սով 'ի վերայ երեսաց ա՟մ երկրի. և եբաց յովսէփ զա՟մ շտեմարանս ցորենոյ. և վաճառէր ամենայն եգիպտացւոցն։ և սաստկացաւ սովն յա՟մ երկրին եգիպտացւոց։ 57 *Եւ ամենայն աշխարհ գային յեգիպտոս գնել 'ի յովսէփայ. զի զօրանայր սովն ընդ ա՟մ երկիր։

‖ Սաղմ. 104.16.

## ԳԼ: ԽԲ:

1 Եւ ետես յակոբ եթէ գոյ վաճառ յերկրին եգիպտացւոց. ասէ յակոբ ցորդիսն իւր. ընդէ՞ր հեղգայք։ 2 *Ահա լուեալ, եթէ գոյ ցորեան յեգիպտոս. իջէք անդր, և գնեցէք մեզ սակաւ մի կերակուր. զի կեցցուք, և մի՛ մեռցուք։ 3 *Եւ ‖ իջին եղբարքն յովսէփայ տասնեքին գնել ցորեան յեգիպտոս։ 4 *Եւ զբենիամին զեղբայրն յովսէփայ ոչ արձակեաց յակոբ՝ ընդ եղբարսն. քանզի ասէր՝ թէ գուցէ պատահիցի նմա հիւանդութի՛ւն։ 5 *Եւ եկին որդիքն իսրայէլի գնել ընդ այլ երթևեկսն. քանզի էր սով յերկրին քանանացւոց։ 6 *Եւ յովսէփ էր իշխան երկրին. և նա վաճառէր ա՟մ ժողովրդեան երկրին։ և եկեալ եղբարքն յովսէփայ երկիրպագանէին 'ի վերայ երեսաց խոնարհ յերկիր։ 7 *Եւ իբրև ետես յովսէփ զեղբարսն իւր՝ և ծանեաւ. և օտարանայր 'ի նոցանէ. և խօսեցաւ ընդ նոսա խստագոյնս՝ և ասէ. ուստի՞ գայք։ և նոքա ասեն. յերկրէն քանանացւոց գնել կերակուրս։ 8 *Ծանեաւ յովսէփ զեղբարսն իւր. և նոքա ոչ ծանեան զնա։ 9 *Եւ յիշեաց յովսէփ զերազսն իւր՝ զոր ետես։ և ասէ ցնոսա. լրտեսք էք դուք. և զխոտել զել և զմուտ աշխարհիս եկեալ էք։ 10 *Եւ նոքա ասեն, ո՛չ տէր։ ծառայքս եկեալ եմք գնել կերակուրս։ 11 *Ամենեքին մեք եմք որդիք առն միոյ. արք խաղաղութե՟ն եմք. և չեն ծառայքս լրտեսք։ 12 *Ասէ ցն՟ս՝ ո՛չ, այլ զել և զմուտ երկրիս եկեալ էք տեսանել։ 13 *Եւ նոքա ասեն. երկոտասան եղբարք եմք ծառայք քո՝

‖ Ի վայր. 43.20.

որդիք առն միոյ՝ յերկրին քանանացւոց։ և կրտսերն առ հօր իւրում է այսօր. և միւսն չէ ՛ի միջի։ 14 *Ասէ ցնոսա յովսէփ. այդ ինչ է՝ զոր ասացի ձեզ եթէ լրտեսք էք։ 15 *Աւադիկ յայտ արարից. երդուեալ յարեւն փարաւոնի, ոչ ելանէք աստի, եթէ ոչ եկեսցէ եղբայրն ձեր կրտսեր այսր։ 16 *Արդ առաքեցէք զմի ոք ՛ի ձէնջ և ածցէ զեղբայրն ձեր. և դուք կացէք ՛ի դիպահոջ մինչև յայտնի լինիցին բանք ձեր. եթէ արդար խօսիցիք և թէ ոչ. ապա թէ ոչ՝ երդուեալ յարեւն փարաւոնի. թէ ոչ լրտեսք էք դուք։ 17 *Եդ զնոսա ՛ի բանտի զերիս աւուրս։ 18 *Եւ ասէ ցնոսա յովսէփ՝ յաւուրն երրորդի։ զայս արարէք, և ապրիք. զի և ես յԱյ երկիւղած եմ։ 19 *Եթէ արք խաղաղութեան էք. եղբայր մի ՛ի ձէնջ աստ մնասցէ ՛ի բանտի. և դուք տարայք զվաճառ ցորենոյդ ձերոյ։ 20 *Եւ || զեղբայրն ձեր կրտսեր ածէք առ իս. և հաւատարիմք լինիցին բանք ձեր՝ ապա թէ ոչ՝ մեռանիք. արարին այնպէս։ 21 *Եւ ասէ իւրաքանչիւրոք ցեղբայր իւր։ այո. քանզի ՛ի մեղս եմք վն եղբօրն մերոյ. զի արհամարհեցաք զնեղութիւն ոգւոյն նորա. յորժամ աղաչէրն զմեզ՝ և ոչ լուաք նմա. վասն այնորիկ եկն ՛ի վերայ մեր այս նեղութի։ 22 *Պատասխանի ետ ռուբէն՝ և ասէ ցնոսա. ո՞չ խօսեցայ ընդ ձեզ՝ և ասեմ. թէ || մի մեղանչէք մանկանդ. և ոչ լուայք ինձ. և ահա արիւն նր խնդրի։ 23 *Եւ նոքա ոչ գիտէին, թէ լսէր յովսէփ. զի թարգման կայր ՛ի միջի։ 24 *Եւ անցեալ մեկուսի ՛ի նոցանէ ելաց յովսէփ. և եկն միւսանգամ առ նոսա. և խօսեցաւ ընդ նոսա։ 25 *Եւ էառ ՛ի նոցանէ զշմաւօն. և կապեաց առաջի նոցա։ և ետ հրաման յովսէփ լնուլ զամանս նոցա ցորենով, և դնել զարծաթն իւրաքանչիւր ՛ի քրձի իւրում. և տալ նց պաշար ՛ի ճանապարհ. և եղև նոցա այնպէս։ 26 *Եւ նոցա բարձեալ իւրաքանչիւր իշոյ՝ գնացին անտի։ 27 *Եւ լուծեալ միոյ զքուրձ իւր տալ կերակուր գրաստու իւրում յիջավանին՝ ետես զծրար արծաթոյն իւրոյ. զի կայր ՛ի բերան քրձի իւրոյ։ 28 *Ասէ ցեղբարս իւր. դարձուցաւ ինձ այրէն արծաթն. և ահա աստէն կայ ՛ի քրձի իմում. և զարմացան միտք նց. խռովեցան ընդ միմեանս՝ և ասեն. զի՞նչ է այս՝ զոր արար ընդ մեզ Ած։ 29 *Եւ եկին առ յակոբ հայրն իւրեանց՝ յերկրին քանանու. և պատմեցին նմ զամենայն. որ եղանց ընդ նոսա՝ և ասեն։

|| Ս առ. 43.5. || Ս եր. 37.21.

30 *Խօսեցաւ այրն, տէր երկրին ընդ մեզ խստագոյնս, և եդ զմեզ ՛ի բանտի, իբրև զլրտեսս երկրին։ 31 *Եւ ասեմք ցնա, արք խաղաղութեան եմք՝ և չեմք լրտեսք։ 32 *Երկոտասան եղբարք եմք որդիք հօր մերոյ. մինն չէ ՛ի միջի, և կրտսերն այժմ ընդ հօր մերում է յերկրին քանանացւոց։ 33 *Ասէ ցմեզ այրն տէր երկրին. այդու գիտացից եթէ արք խաղաղութեան էք. եթէ զեղբայր մի ձեր աստ առ իս թողջիք. և զվաճառս ցորենոյդ ՛ի տունս ձեր առեալ տանիցիք։ 34 *Եւ զեղբայրն ձեր կրտսեր ածիցէք առ իս. և գիտացից եթէ չէք լրտեսք՝ այլ արք խաղաղութեան էք. և զայս և եղբայր տաց ցձեզ. և յերկրի աստ առնիցէք վաճառ։ 35 *Եւ եղև ՛ի թափելն նոցա զքուրձս իւրեանց. և կայր իւրաքանչիւր ուրուք ծրար արծաթոյ ՛ի քրձի իւրեանց։ և իբրև տեսին զծրարս արծաթոյ իւրեանց, ինքեանք և հայրն իւրեանց, երկեան յոյժ։ 36 *Եւ ասէ ցնոսա յակոբ հայրն իւրեանց. զիս անորդի՛ արարէք. յովսէփ չէ ՛ի միջի. շմաւօն չէ ՛ի միջի. և զբենիամին եւս առնուցուք։ յիմ վերայ եկն այս ամ։ 37 *Խօսեցաւ ռուբէն ընդ հօր իւրում, և ասէ. զերկոսին զորդիսն իմ սպան ջիր. եթէ ոչ ածից զդա առ քեզ. տո՛ւր զդա յիմ ձեռն. և ես ածից զդա առ քեզ։ 38 *Եւ նա ասէ. ո՛չ իջանէ որդի իմ ընդ ձեզ. զի եղբայր սորա մեռաւ. և սա միայն մնացեալ է. և դէպ լինիցի սմա հիւանդանալ ՛ի ճանապարհին. զոր երթայցէք. և իջուցանիցէք զծերութի իմ տրտմութբ ՛ի դժոխս։

## ԳԼ. ԽԳ.

1 Եւ սով եւս քան զեւս սաստկանայր ՛ի վր երկրին։ 2 *Եւ եղև իբրև սպառեցին ուտել զցորեանն, զոր բերին յերկրէն եգիպտացւոց. ասէ ցնս հայրն իւրեանց. դարձեալ երթա՛յք՝ գնեցէ՛ք սակաւ մի կերակուրս։ 3 *Խօսեցաւ ընդ նմա յուդա՝ և ասէ. վկայութեամբ եդ ընդ մեզ վկայութի այրն, և ասէ. || մի՛ տեսանիցէք զերեսս իմ. եթէ ոչ եղբայրն ձեր կրտսեր ընդ ձեզ իցէ։ 4 *Արդ՝ եթէ արձակես զեղբայրդ մեր ընդ մեզ՝ իջցո՛ւք, և գնեսցո՛ւք կերակուրս։ 5 *Ապա թէ ոչ արձակեսցես զեղբայրդ մեր ընդ մեզ, ո՛չ երթիցուք. զի այրն խօսեցաւ ընդ մեզ՝ և ասէ, մի՛ տեսանիցէք զերեսս իմ. եթէ ոչ եղբայրն ձեր կրտսեր ընդ ձեզ իցէ։ 6 *Եւ ասէ իսրայէլ. զի՞նչ չարիս հասուցէք ՛ի վե-

|| Ս եր. 42.20.

րայ իմ. զի պատմեցիք առն թէ գոյ
ցէ ձեր եղբայր։* Եւ նոքա ասեն՝ հար
ցանելով եհարց զմեզ այրն. և զազգէ
մերմէ. և թէ տակաւին կենդանի՞
իցէ հայրն ձեր. և եթէ իցէ՞ ձեր եղ
բայր. և պատմեցաք նմա ըստ հար
ցանելոյն նորա. միթէ գիտէաք թէ
ասելոց իցէ ցմեզ՝ ածէք զեղբայրն
ձեր։ * Ասէ յուդա ցիսրայէլ ցհայրն 8
իւր. արձակեա ընդ իս զպատանեակդ.
և յարուցեալ գնասցուք. զի կեցցուք,
և մի՛ մեռցուք, և մեք և դու. և սուա
ցուածք մեր : * Ես առնում զդա 9
յերաշխի։ 'ի ձեռաց իմոց խնդրեսջիր
զդա. եթէ ոչ ածից զդա՝ և կացուցից
առաջի քո՝ յանցաւոր եղէց զամենայն
աւուրս։ * Զի եթէ ոչ էաք յամեալ, 10
արդ երկիցս՝ իսկ դարձեալ էր այս
րէն : * Ասէ ցնոսա իսրայէլ հայրն 11
իւրեանց. եթէ այդպէս իցէ, արա
րէք զայդ : առէք 'ի պտղոյ երկրիս
յամանս ձեր. և տարայք առն պա
տարագս. ռետին՝ և մեղր՝ և խունկ,
և ստաշխն, և բեւեկն, և ընկոյզ :
* Եւ արծաթ կրկին առէք 'ի ձեռս 12
ձեր. զարծաթն, որ դարձաւ յամանս
ձեր՝ տարայք ընդ ձեզ. գուցէ ընդ
խաբս ինչ իցէ։ * Եւ զեղբայրդ ձեր 13
առէք՝ և արիք, իջէք առ այրն։* Եւ 14
Աստուած իմ տացէ ձեզ շնորհս առաջի
առն. և արձակեսցէ ընդ ձեզ զեղ
բայրն ձեր զմիւս՝ և զբենիամին։ բայց
ես որպ անզաւակեցայ : * Եւ առեալ 15
արանցն զպատարագսն. և արծաթ
կրկին 'ի ձեռս իւրեանց, և զբենիամին.
յարուցեալ իջին յեգիպտոս. և կա
ցին յանդիման յովսեփայ : * Իբրև ե 16
տես զնա յովսէփ. և զբենիամին եղբայր
իւր. ասէ ցհազարապետ տանն իւրոյ.
տար զարս 'ի տուն՝ և զեն զզենլիս. և
պատրաստեա. զի ընդ իս ուտելոց են
արքդ այդոքիկ 'ի միջօրէի։* Եւ արար 17
այրն, որպէս և ասաց յովսէփ. և տարաւ
զարսն 'ի տուն յովսեփայ։* Եւ տեսեալ 18
արանցն եթէ տարան զնոսա 'ի տուն
յովսեփայ. ասեն՝ վասն արծաթոյն, որ
դարձաւ յամանս մեր զառաջինն՝
մտանեմք անդր, առ 'ի խուզելոյ զմեզ
արկանել 'ի վր մեր. և առնուլ զմեզ
'ի ծառայս. և զէշս մեր : * Մատու 19
ցեալ առ այրն՝ վերակացու տանն յո
վսեփայ։ * Խօսեցան առ դրանն՝ և ա 20
սեն. աղաչեմք զքեզ տէր. Իջաք զա
ռաջինն գնել կերակուրս։* Եւ եղև 21
իբրև հասաք յիջավանս. և բացաք
զամանս մեր. և արծաթ իւրաքանչ
իւր յամանի իւրում էր. արդ՝ զար
ծաթն այսրէն կշռով դարձուցաք. և

‖ Վր. 44. 32.

Ճշմ.

‖ Վր. 42. 3.

22 աւասիկ 'ի ձեռին մերում է : * Եւ
այլ արծաթ բերաք ընդ մեզ գնել
կերակուրս. և ոչ գիտեմք՝ ով եդ զար
23 ծաթն յամանս մեր։ * Ասէ ցնոսա.
խաղաղութիւն ընդ ձեզ՝ մի՛ երկնչիք։
Աստուած ձեր՝ և հարցն ձերոց՝ եդ ձեզ
գանձս յամանս ձեր. այլ իմ զձեր
արծաթն առեալ, և հաճեալ եմ։ և
24 եհան առ նոսա զշմաւոն։ * Եւ տա
րաւ 'ի ներքս այրն զնոսա 'ի տուն յո
վսեփայ. և բերին ջուր լուանալ զոտս
նց. և ետ կերակուր գրաստուց նոցա։
25 * Եւ նոքա պատրաստեցին զպատա
րագսն մինչև եկեալ էր յովսէփ 'ի մի
ջօրէին. քանզի լուան թէ անդ ճաշա
26 կելոց է : * Եմուտ յովսէփ 'ի տուն. և
մատուցին նմա զընծայսն՝ զոր ունէին
'ի ձեռս իւրեանց 'ի տան անդ. և եր
կիր պագին նմա 'ի վր երեսաց իւր
27 եանց յերկիր։ * Եհարց զնս՝ և ասէ.
զիա՞րդ կայք։ և ասէ ցնոսա։ թէ ո՞ղջ
իցէ հայրն ձեր ծերունի. զորմէ ասա
28 ցիք թէ տակաւին կենդանի է : * Եւ
նոքա ասեն՝ ողջ է ծառայ քո հայր
մեր. տակաւին կենդանի է : և ասէ՝
օրհնեալ է այրն այն յԱյ. և խոնար
29 հեցան երկիրպագին նմա։ * Ամբարձ
զաչս իւր՝ և ետես զբենիամին զեղբայր
իւր զհամամայր՝ և ասէ. այդ է եղբայրն
ձեր կրտսեր՝ զորմէ ասացիք ածել
առ իս։ և ասէ, Այ ողորմեսցի քեզ որ
30 դեակ : * Եւ խռովեցաւ յովսէփ՝ և
դալարեցին աղիք նր 'ի վերայ եղբօրն
իւրոյ. և խնդրէր լալ։ մտեալ 'ի սե
31 նեակ անդր ելաց։* Եւ լուացեալ զե
րեսս իւր ել։ ժուժկալեաց զանձն, և ասէ՝
32 արկէք հաց։* Եւ արկին նմա միայնոյ՝
և նոցա իւրաքանչիւր ումեք։ և եգիպ
տացւոյն, որք ճաշէին ընդ նմա իւրա
քանչիւր առանձինն : զի ոչ կարէին
եգիպտացիքն ուտել զհաց ընդ եբ
րայեցիսն. քանզի զարշելի էին եգիպ
33 տացւոյն* Նստաւ առաջի նր անդ
րանիկն ըստ երիցութե իւրում. և
կրտսերն ըստ կրտսերութե իւրում.
և զարմացեալ էին արքն իւրաքանչիւր
34 ընդ եղբօր իւրում։ * Եւ առին իւր
եանց մասունս 'ի նմանէ. և մեծացաւ
մասն բենիամենի քան զմասունս ա
մենեցուն հնգապատիկ քան զնոցայն։
արբին՝ և արբեցան ընդ նմա։

## ԳԼ. ԽԴ.

1 Եւ հրամայեաց յովսէփ հազարա
պետին իւրում՝ և ասէ. լցէք
զամանս արանցն կերակրով. որչափ և
կարիցեն բառնալ. և դիք զարծաթն
իւրաքանչիւր 'ի բերան ամանոյ իւրոյ։

* Եւ

2 Եւ զսկիհն իմ արծաթի դիցէք յաման կրտսերոյն. և զգին ցորենոյն նր։ Եւ եղև ըստ բանին յովսեփայ՝ որպէս և ասաց։ 3 Եւ իբրև առաւօտ եղև՝ արձակեցան արքն. ինքեանք՝ և էշք իւրեանց։ 4 Եւ իբրև ելին ըստ քաղաքն. և չէին մեկնեալ ՚ի բաց. ասէ յովսեփ ցհազարապետն իւր՝ արի պնդեաց զհետ արանցն. և հասցես նց. և ասասցես ցնոսա. զի՞ է զի հատուցէք չար փոխանակ բարեաց։ 5 Ընդէ՞ր գողացայք զսկիհն արծաթի։ ոչ այն էր՝ որով ըմպէր տէրն իմ. և նովաւ ինքն հմայելով հմայէր։ և արդ՝ չար գործեցիք՝ զոր արարիքդ։ 6 Եւ իբրև եգիտ զնոսա. ասէ ըստ բանիցս այսոցիկ։ 7 Եւ նոքա ասեն ցնա. ընդէ՞ր խօսիցի տր մեր այդպիսի բանս. քաւ լիցի ծառայից քոց առնել ըստ բանիդ այդմիկ։ 8 Ոչ եթէ զարծաթն՝ զոր գտաք յամանս մեր՝ դարձուցաք առ ձեզ յերկրէն քանանացւոց. զիա՞րդ գողանայաք ՚ի տանէ տն քոյ արծաթ կամ ոսկի։ 9 Եւ արդ՝ առ որում գտցի ՚ի ծառայից քոց սկիհն՝ մեռցի. և մեք եղիցուք տեառն մերում ծառայք։ 10 Եւ ասէ՝ այդպէս եղիցի. որպ ասացէքդ։ առ որում գտցի սկիհն՝ եղիցի իմ ծառայ. և դուք անպարտք լինիցիք։ 11 Եւ փութացան իջուցին զբեռն իւր աքանչիւր ՚ի գետին. և բացին իւրաքանչիւր զաման իւր։ 12 Եւ յուզեաց. սկսեալ յերիցուէն մինչև եկն կատարեաց ՚ի կրտսերն. և եգիտ զսկիհն յաման բենիամենի։ 13 Եւ պատառեցին զհանդերձս իւրեանց. և եդին իւրաքանչիւր զբեռն իւր ՚ի վր իշոյ իւրոյ. և դարձան ՚ի քաղաքն։ 14 Եւ եմուտ յուդա և եղբարք իւր առ յովսէփ. մինչդեռ անդէն էր. և անկան առաջի նորա ՚ի վերայ երկրի։ 15 Ասէ ցնոսա յովսէփ. զի՞նչ են իրքդ՝ զոր արարէք. ոչ գիտէք թէ հմայելով հմայէ այր՝ որ իբրև զիս է։ 16 Ասէ յուդա. զի՞նչ տացուք պատասխանի տն՝ կամ զի՞նչ խօսիցիմք. և կամ զո՞ր իրաւունս ցուցանիցեմք։ եգիտ Ա̃ծ զյանցանս ծառայից քոց. արդ աւասիկ կամք ծառայք տեառն մերոյ. մեք, և առ որում սկիհն գտաւ։ 17 Եւ նա ասէ. քաւ լիցի ինձ առնել զբանդ զայդ։ այրն, առ որում գտաւ սկիհն, նա եղիցի իմ ծառայ. և դուք ելէք ողջութբ առ հայրն ձեր։ 18 Մատուցեալ առ նա յուդա և ասէ. աղաչեմ տէր. խօսեսցի ծառայ քո բան մի առաջի քո. մի բարկասցիս ծառայի քում. զի դու ես յետ փարաւոնի։ 19 Տէր, դու ‖ հարցեր ցծառայս քո՝ և ասես. եթէ ‖ կայցէ ձեր հայր կամ եղբայր։ 20 Եւ մեք ասեմք տեառն, կայ մեր հայր ծերացեալ. և մանուկ մի կրտսեր՝ որդի ծերութե նորա. և եղբայր նորա մեռաւ։ և նա միայն մնաց մօր իւրոյ. և հայրն սիրէ զնա։ 21 Եւ ասացեր ցծառայս քո. իջուցէք զնա առ իս՝ և խնամարկեցից նմա։ 22 Եւ ասացաք ցտէր. ոչ կարէ մանուկն թողուլ զհայր իւր. ապա թէ թողուցու զհայր իւր՝ մեռանի։ ‖ 23 Եւ դու ասացեր ‖ ցծառայս քո. եթէ ոչ իջանիցէ եղբայրն ձեր կրտսեր ընդ ձեզ՝ մի յաւելցիք տեսանել զերեսս իմ։ 24 Եւ եղև՝ իբրև ելաք մեք առ ծառայ քո հայր մեր. պատմեցաք նմա զբանս տեառն մերոյ։ 25 Եւ ասէ հայր մեր. երթայք դարձեալ՝ գնեցէք սակաւ մի մեզ կերակուր։ 26 Եւ մեք ասացաք. թէ ոչ կարեմք իջանել անդր. եթէ ոչ եղբայրդ մեր կրտսեր իջանիցէ ընդ մեզ. և ապա իջանիցեմք։ զի ոչ կարեմք տեսանել զերեսս առն. եթէ եղբայրդ մեր կրտսեր ընդ մեզ ոչ իցէ։ 27 Եւ ասէ ցմեզ ծառայ քո հայր մեր. ‖ դուք ինքնին գիտէք՝ զի երկուս ծնաւ ‖ ինձ կին իմ։ 28 Մին ել յինէն՝ և ասացիք թէ գազանակուր եղև. և ոչ ևս տեսանեմ զնա մինչև ցայժմ։ 29 Արդ՝ եթէ զսա ևս առնուցուք յերեսաց իմոց, պատահիցի սմա հիւանդութի ՚ի ճանապարհի. իջուցանէք զծերութիւն իմ տրտմութբ հանդերձ ՚ի դժոխս։ 30 Եւ արդ՝ թէ երթայցեմք առ ծառայ քո հայր մեր՝ և պատանեակս չիցէ ընդ մեզ. և նորա ոգին կախեալ կայ զդորա յոգւոյ։ 31 Եւ լինիցի, իբրև ոչ տեսանիցէ ը մեզ զմանուկդ՝ վախճանիցի. և իջուցանիցեն ծառայք քո զծերութի ծառայի քոյ հօր մերոյ չարչարանօք հանդերձ ՚ի դժոխս։ 32 Զի ծառայի քոյ առեալ է յերաշխի զմանուկդ ՚ի հօրէ իւրմէ. ‖ ասեմ եթէ ‖ ոչ ածից զդա առ քեզ՝ և կացուցից առաջի քո. յանցաւոր եղէց առ հայր իմ զա̃մ աւուրս։ 33 Եւ արդ կացից ես ծառայ քո փոխանակ մանկանդ՝ ստրուկ տեառն իմոյ. և պատանեակդ ելցէ ընդ եղբարս իւր։ 34 Քանզի զիա՞րդ ելանիցեմ առ հայրն իմ, եթէ պատանեակդ չիցէ ընդ մեզ. զի մի տեսից զչարիսն. որք գտանիցեն զհայր իմ։

Վեր. 42. 11.

Վեր. 43. 3. և 5.

Վեր. 37. 20. և 33.

Վեր. 43. 9.

## ԳԼ. ԽԵ.

1 Եւ ոչ կարաց յովսեփ ժուժ կալ առաջի ամենեցուն՝ որք շուրջ

զնովաւ կային․ այլ ասէ՝ հանէք զա֊
մենեսին արտաքս յինէն։ և չկայր և
ոք առ նմա յորժամ ետ ծանօթս
եղբարցն իւրոց։ *Եւ ձայն բարձեալ 2
լալով հանդերձ՝ մինչ լուան եգիպ֊
տացիքն։ և ազդ եղև ՚ի տուն փարաւ
ոնի։ *Ասէ յովսէփ ցեղբարսն իւր։ Ես 3
եմ յովսէփ․ արդարև՝ տակաւին կեն֊
դանի՞ իցէ հայր իմ․ և ոչ կարէին եղ
բարք նորա տալ նմա պատասխանի․
զի խռովեցան յերեսաց նորա։ *Ասէ 4
յովսէփ ցեղբարսն․ մօտ եկա՛յք առ իս։
‖Գործ․ և չոգան մօտ․ ‖ և ասէ, ես եմ յովսէփ
7․13․ եղբայրն ձեր․ զոր դուք վաճառեցիք
յեգիպտոս։ *Բայց մի ինչ տրտմիք․ 5
և մի խիստ թուեսցի ձեզ զի վաճա
‖Վայր․ ռեցիք զիս այսր․ ‖քանզի ՚ի փրկութի
50․ 20․ առաքեաց զիս Ա՟Ծ առաջի ձեր։ *Զի 6
այս երկրորդ ամ է սովոյս ՚ի վերայ
երկրի․ և այլ հինգ և ամ յորս ոչ լի֊
նիցի վար, և ոչ հունձ։ *Եւ զիս ա֊ 7
ռաքեաց Ա՟Ծ առաջի ձեր․ առ ՚ի թող
լոյ ձեզ զաւակ յերկրի․ և կերակրել
զձեր մնացորդս մեծամեծս։ *Եւ 8
արդ՝ ոչ եթէ դուք առաքեցիք զիս
այսր, այլ Ա՟Ծ․ և արար զիս հայր փա
րաւոնի․ և տէր ամ՟ տան նորա․ և իշ֊
խան ամենայն երկրիս եգիպտացւոց։
*Արդ փութացեալ ելէ՛ք առ հայրն 9
իմ, և ասասջի՛ք ցնա․ այսպէս ասէ որդի
քո յովսէփ։ արար զիս Ա՟Ծ տէր ամ՟ երկ
րիս եգիպտացւոց․ ա՛րդ եկ՝ էջ առ իս՝
և մի հեղգար։ *Եւ բնակեսցիս յերկ 10
րիս գեսեմ․ յարաբօթ․ և եղիցիս մօտ
առ իս․ դու և որդիք քո՝ և որդիք որդ
ւոց քոց․ և ոչխար քո․ արջառ քո՝ և որ
ինչ քո իցէ։ *Եւ կերակրեցից զքեզ 11
անդ․ զի այլ ևս հինգ ամ կայ սովոյս․
զի մի սատակիցիս դու և որդիք քո․ և
ամ՟ ստացուած քո։ *Ահաւասիկ աչք 12
ձեր տեսանեն․ և աչք բենիամինի եղ
բօր իմոյ․ զի բերան իմ խօսի ընդ ձեզ․
*Արդ պատմեցէ՛ք հօր իմում զամե֊ 13
նայն զփառս իմ, որք են յեգիպտոս․ և
որչափ ինչ տեսիք դուք։ և փութա֊
ցեալ իջուցէ՛ք զհայրն իմ այսր։ *Եւ 14
անկեալ ՚ի վերայ պարանոցին բենիա
մենի եղբօր իւր՝ ելաց․ և բենիամին
ելաց ՚ի վերայ պարանոցի նր՟։ *Եւ 15
համբուրեաց զամ՟ եղբարսն իւր․ և
ելաց ՚ի վերայ նց՟։ յետ այնորիկ խօսե֊
ցան եղբարք նորա ընդ նմա։ *Եւ հն֊ 16
չեաց համբաւն ՚ի տուն փարաւոնի․ և
ասեն՝ եկին եղբարք յովսէփու․ ուրախ
եղև փարաւոն և ծառայք նր՟։ *Եւ 17
ասէ փարաւոն ցյովսէփ․ ասա՛ ցեղբարս
քո՝ այսպէս արարէ՛ք․ լցէ՛ք զբեռինս
ձեր՝ և երթայք յերկիրն քանանացւոց։

18 *Եւ առեալ զհայրն ձեր և զստա֊
ցուածս ձեր՝ եկեսջի՛ք առ իս․ և տաց
ձեզ յամ՟ բարութեցս եգիպտացւոց․
19 և կերիջի՛ք զուղեղ երկրիս։ *Եւ տո՛ւր
զայս հրաման։ տացես առնուլ յերկ֊
րէս եգիպտացւոց սայլս, մանկանց և
կանանց ձերոց․ և առեալ զհայրն ձեր
20 ածիցէք։ *Եւ մի ագահիցեն աչք ձեր
՚ի կահ ձեր․ զի բարութի ամ՟ եգիպ
21 տացւոցս ձեզ լինիցի։ *Եւ արարին
այնպէս որդիքն իսրայէլի՝ և ետ նց՟
յովսէփ սայլս․ ըստ բանիցն փարաւո
նի արքայի։ և ետ նոցա պաշար ՚ի ճա֊
22 նապարհ։ *Եւ ամենեցուն ետ կրկին
պատմուճանս․ և բենիամինի ետ երեք
հարիւր դահեկան․ և հինգ պատմու
23 ճան փոխանակաւ։ *Եւ հօրն իւրում
ետ տանիլ նոյնպէս։ և տասնիշոյ բե֊
ռինս յամենայն բարութեց եգիպ֊
տացւոց․ և տասն ջորի նպարակաւոր,
և կերակուր հօրն իւրում ՚ի ճանա֊
24 պարհի ։ *Եւ արձակեաց զեղբարս
իւր՝ և գնացին․ և ասէ ցնոսա․ մի զայ
րանայցէք ինչ ՚ի ճանապարհի ։
25 *Ելին յեգիպտոսէ․ և չոգան յերկիրն
քանանացւոց․ առ յակոբ հայրն իւր
26 եանց։ *Եւ պատմեցին նմա, և ասեն․
որդի քո յովսէփ կենդանի է․ և նա է
իշխան երկրին եգիպտացւոց, և զար֊
մացաւ ՚ի միտս իւր յակոբ․ զի ոչ
27 հաւատայր նոցա։ *Եւ խօսեցան ընդ
նմա զամ՟ ինչ՝ զոր ասաց յովսէփ․ իբրև
ետես զսայլսն, զոր առաքեաց յովսէփ
առնուլ զնա․ արծարծեցաւ ոգին
28 յակոբայ հօր նոցա։ *Եւ ասէ իս֊
րայէլ՝ մե՛ծ է ինձ՝ եթէ արդարև տա
կաւին կենդանի իցէ որդի իմ յովսէփ․
երթայց՝ և տեսից զնա մինչչև մե֊
ռեալ իցեմ։

## Գ Լ ։ ԽԶ ։

1 Չուեաց իսրայէլ ինքն՝ և ամենայն
ինչ որ իւր էր․ և եկն ՚ի ջրհորն
երդման․ և մատոյց պատարագ Ա՟Ծ
2 հօր իւրոյ իսահակայ։ *Խօսեցաւ Ա՟Ծ
ընդ իսրայէլի ՚ի տեսլեան գիշերոյ՝ և
ասէ․ յակոբ՝ յակոբ ։ և նա ասէ․ ո՛վ
3 ես։ *Ասէ՝ ես եմ Ա՟Ծ հարցն քոց․ մի
երկնչիր իջանել յեգիպտոս․ զի յազգ
4 մեծ արարից զքեզ անդր։ *Ես իջից
ընդ քեզ յեգիպտոս ․ և ես հանից
զքեզ խաղաղ․ և յովսէփ դիցէ զձեռս
5 իւր ՚ի վր՟ աչաց քոց։ *Յարեաւ յակոբ
՚ի ջրհորոյ անտի երդման․ ‖ և առին
որդիքն իսրայէլի զյակոբ զհայրն իւր ‖Գործ․
եանց․ և զկազմած և զկանայս իւր֊ 7․15․
եանց, ՚ի սայլսն զոր առաքեաց յովսէփ
առնուլ զնա․ և առեալ զինչս իւրեանց։
*Եւ

6 *Եւ զա̃մ ստացուածս զոր ստացան յերկրին քանանացւոց. ||Մտին յեգիպտոս յակոբ և ամենայն զաւակ նորա ընդ նմա: 7 *Որդիք նր̃, և որդիք որդւոց նորա ընդ նմա. դստերք նորա, և դստերք դստերաց նորա: և զամենայն զաւակ իւր էած յեգիպտոս: 8 *Եւ այս են անուանք որդւոցն իսրայէլի որք մտին յեգիպտոս: յակոբ և որդիք իւր: ||Անդրանիկ յակոբու՝ ռուբէն: 9 *Եւ որդիք ռուբենի՝ ենոք. և փաղղուս. սարսոն. և քարմի: 10 *||Եւ որդիք շմաւօնի. յամուէլ. և յամին. և ահոդ. և յաքին. և սահառ. և սաւուղ որդի քանանացւոյն: 11 *||Եւ որդիք ղևեայ. գերսոն. և կահաթ. և մերարի: 12 *||Եւ որդիք յուդայ. էր՝ և օնան. և սելոմ. և փարէս. և զարա: և մեռան, էր և օնան յերկրին քանանացւոց: և եղեն որդիք փարեսի՝ ասրոմ. և յամուէլ: 13 *||Եւ որդիք իսաքարայ. թողա՝ և փուդ. յասուբ. և զամամ: 14 *Եւ որդիք զաբուղոնի՝ սերեդ. և աղղոն. և եէլ: 15 *Սոքա են որդիք լիայ՝ զոր ծնաւ յակոբայ 'ի միջագետս ասորւոց. և զդինա դուստր նորա. ա̃մ ոգիք ուստերք և դստերք երեսուն և երեք:

16 *Եւ որդիք գադայ. սափոն. և մեգիս. և սօնիս. և թասոբամ. և այեդիս. և արոելիս. և արիելիս: 17 *||Եւ սոքա են որդիք ասերայ. յեմնա. և յեսուա. և յեուլ՝ և բարիա. և սարա քոյր նոցա. և որդիք բարիայ՝ քոբոր. և մեղքիէլ: 18 *Սոքա են որդիք զելփայ. զոր ետ լաբան լիայ դստերն իւրում: որ ծնաւ զսոսա յակոբայ. վեշտասան ոգիս: 19 *Եւ որդիք ռաքելայ կնոջ յակոբայ յովսէփ, և բենիամին: 20 ||*Եւ եղեն որդիք յովսեփայ յերկրին եգիպտացւոց. զորս ծնաւ նմա ասանեթ դուստր պետափրեայ քրմի արեգքաղաքի. զմանասէ. և զեփրեմ: և եղեն որդիք մանասէի՝ զոր ծնաւ նմա հարճն ասորի. զմաքիր. և մաքիր ծնաւ զգաղաադ. և որդիք եփրեմի եղբօրն մանասէի սուտաղաամ. և տաամ. և որդիք սուտաղաամայ. եդեմ: 21 *||Եւ որդիք բենիամենի՝ բաղա. և բոքոր. և ասբէէ. և եղեն որդիք բաղայ գէէրա. և նէէման. և անաքիս. և ռօս. և մամփիմ. և ոփիմին: և գէէրա ծնաւ զարադ: 22 *Սոքա են որդիք ռաքէլի՝ զորս ծնաւ յակոբայ. ա̃մ ոգիք ութ և տասն: 23 *Եւ որդիք դանայ ասօմ: 24 *Եւ որդիք նեփթաղեմի. աւսիէլ. և գօնի. և ասասար. և սիլլեմ: 25 *Սոքա են որդի բաղղայ՝ զոր ետ լաբան ռաքելի դստեր իւրում. և ծնաւ զսոսա յակոբայ. ամենեքին ոգիք եօթն:

26 *||Եւ ա̃մ ոգիք որք մտին ը̃ յակոբայ յեգիպտոս, որք ելեալ էին յերանաց նորա, առանց կանանց որդւոցն յակոբայ, ա̃մ ոգիք վաթսուն և վեց. 27 *Եւ որդիք յովսեփայ որք եղեն նմա յեգիպտոս, որդիք երկու. ||Եւ ա̃մ ոգիք տանն յակոբայ՝ որք մտին յեգիպտոս եօթանասուն և հինգ: 28 *Եւ զյուդա յառաջագոյն առաքեաց առ յովսէփ. գալ նմա ընդ առաջ զքաջաց քաղաքաւն. յերկիրն ռամեսայ և. ինքն եկն յերկիրն գեսեմ: 29 *Կազմեաց յովսէփ զկառս իւր. և ել ընդ առաջ իսրայէլի հօր իւրոյ, զքաջաց քաղաքաւն: և իբրև յանդիման եղև նմա՝ անկաւ 'ի վերայ պարանոցի նր̃, և ելաց 'ի լալիւն մեծ: 30 *Եւ ասէ իէլ ցյովսէփ. մեռայց այսուհետև. որովհետև տեսի զերեսս քո՝ զի տակաւին կենդանի ես: 31 *Եւ ասէ յովսէփ ցեղբարս իւր՝ և ցտունն հօր իւրոյ. երթայց պատմեցից փարաւոնի. եթէ եղբարք իմ, և տունն հօր իմոյ, որք էին յերկրին քանանացւոց, եկին առ իս: 32 *Եւ արք հովիւք են. և արք խաշնադարմանք են: և զանասունս. և զարջառս. և զա̃մ ինչ իւրեանց ածին այսր: 33 *Արդ եթէ կոչիցէ զձեզ փարաւոն՝ և ասիցէ՝ զինչ գործ է ձեր: 34 *Ասասջիք՝ եթէ արք խաշնադարմանք եմք ծառայք քո 'ի մանկութենէ մինչև ցայժմ. և մեք, և հարք մեր: զի բնակիցիք յերկրին գեսեմ: քանզի գարշելի է եգիպտացւոց ա̃մ հովիւ խաշանց:

## ԳԼ: ԽԷ:

1 Եւ եկեալ յովսէփ պատմեաց փարաւոնի, և ասէ. հայր իմ, և եղբարք, և խաշինք, և արջառ նոցա. և ամենայն որ ինչ նոցա, եկին յերկրէն քանանացւոց. և ահա են 'ի գեսեմ: 2 *Եւ յեղբարց անտի իւրոց էառ ընդ իւր հինգ այր. և կացոյց զնոսա առաջի փարաւոնի: 3 *Եւ ասէ փարաւոն ցեղբարսն յովսեփու. զինչ գործ է ձեր: և նոքա ասեն ցփարաւոն. հովիւք խաշանց են ծառայք քո. և մեք, և հարք մեր: 4 *Եւ ասեն ցփարաւոն. պանդխտանալ եկաք յերկրիս յայսմիկ. զի ոչ գոյր ձարակ խաշանց ծառայից քոց. քանզի սաստկացաւ սովն յերկրին քանանացւոց. և արդ՝ բնակեսցուք ծառայք քո յերկրին գեսեմ: 5 *Եւ խօսեցաւ փարաւոն ընդ յովսեփու՝ և ասէ: հայր քո և եղբարք քո եկին առ քեզ: 6 *Ահա երկիրս եգիպտացւոց առաջի քո է. 'ի բարւոք երկրի բնակեցո

զհայր

Յեսու. 24.3. Սաղմ. 104.23. Եսայ. 52.4. || Ելից. 1. 2. և 6.14. Թուոց. 26.5. 1. Մնաց. 5. 1. և 3. || Ելից. 6.15. 1. Մնաց. 4. 24. ||1. Մնա. 6.1. ||1. Մնա. 2. 3. և 4. 21. ||1. Մնա. 7. 1. ||1. Մնա. 7.30. || Վեր. 41.50. ||1. Մնա. 7. 6. և 8.1. ||2. Օրէ. 10. 22.

զհայր քո և զեղբարս քո ։ և բնակեսցեն յերկրին գեսեմ։ ապա թէ գիտես թէ իցեն 'ի նոսա արք զօրաւորք՝ կացո՛ զնոսա իշխանս 'ի վ՜ր խաշանց իմոց ։
7 * Եւ ած յովսէփ զյակոբ զհայր իւր· և կացոյց առաջի փարաւոնի ։ և օրհնեաց յակոբ զփարաւոն ։ 8 * Եւ ասէ փարաւոն ցյակոբ· քանի՛ են ամք աւուրց կենաց քոց ։ 9 * Եւ ասէ յակոբ ցփարաւոն ։ աւուրք ամաց իմոց զորս պանդխտեցայ՝ հարիւր և երեսուն ամ է· սակաւք և գժուարինք եղեն աւուրք ամաց կենաց իմոց· և ոչ հասին յաւուրս ամաց կենաց հարց իմոց· զոր աւուրս պանդխտեցան ։ 10 * Եւ օրհնեաց յակոբ զփարաւոն՝ և ել 'ի նմանէ ։ 11 * Եւ բնակեցոյց յովսէփ զհայրն իւր և զեղբարս իւր· և ետ նոցա բնակութի՛ն յերկրին եգիպտացւոց,'ի բարւոք երկրի· յերկրին ռամեսայ· որպէս հրամայեաց փարաւոն ։ 12 * Եւ տայր յովսէփ ռոճիկս հօրն և եղբարց իւրոց· ցորեան ըստ բերան ։ 13 * Եւ կերակուր ո՛չ գոյր յամենայն երկրին· զի սաստկացաւ սովն յոյժ· և նուաղեցաւ երկիրն եգիպտացւոց և երկիրն քանանացւոց 'ի սովէ անտի ։ 14 * Եւ ժողովեաց յովսէփ զամ՜ արծաթ գտեալ յերկրին եգիպտացւոց՝ և յերկրին քանանացւոց· ընդ ցորենոյն զոր վաճառէր· և տայր նոցա կերակուրս ։ և տարաւ յովսէփ զամ՜ արծաթն 'ի տուն փարաւոնի ։
15 * Եւ նուաղեցաւ արծաթ յերկրին եգիպտացւոց· և յերկրին քանանացւոց։ եկին ամ՜ եգիպտացիքն առ յովսէփ՝ և ասեն· տո՛ւր մեզ հաց· և ընդէ՞ր մեռանիմք առաջի քո· զի պակասեցաւ արծաթ ։ 16 * Ասէ ցն՜ա յովսէփ ։ ածէ՛ք զանասունս ձեր· և տաց ձեզ հաց փոխանակ անասնոց ձերոց· եթէ պակասեցաւ արծաթ ։ 17 * Եւ ածին զանասունսն առ յովսէփ· և ետ նոցա յովսէփ հաց՝ փոխանակ ձիոց· և փոխանակ ոչխարի· և փոխանակ արջառոյ· և փոխանակ իշոց· և կերակրեաց զն՜ս հացիւ՛· փոխանակ ամենայն անասնոց ն՜ց յամին յայնմիկ ։ ել այն ամ ։ 18 * Եւ եկին առ յովսէփ յերկրորդ ամի անդ՝ և ասեն ցնա ։ գուցէ սատակիցիմք 'ի տեառնէ մերմէ ։ եթէ արծաթ էր՝ պակասեցաւ· և եթէ խաշինք և ստացուածք՝ առ քեզ են տէր· և չէ՛ ինչ մնացեալ մեր առաջի տեառն· բայց միայն անձինք՝ և երկիրս մեր ։ 19 * Արդ զի մի՛ մեռանիցիմք առաջի քո մեք և երկիրս աւերիցի· ստացի՛ր զմեզ՝ և զերկիրս մեր փոխանակ հացի· եղիցուք մեք և երկիրս մեր ծառայք փարաւոնի· տո՛ւր զսերմն զի սերմանեսցուք· և կեցցուք՝ և մի՛ մեռցուք· և երկիրս 20 մի՛ աւերեսցի ։ * Եւ ստացաւ յովսէփ զամ՜ երկիրն եգիպտացւոց փարաւոնի· քանզի վաճառեցին եգիպտացիքն զերկիրն իւրեանց փարաւոնի· զի սաստկացաւ 'ի վ՜ր ն՜ց սովն ։ և եղև 21 երկիրն փարաւոնի ։ * Եւ զժողովուրդն ծառայեցոյց իւր 'ի ստրուկս· 'ի ծագաց սահմանացն եգիպտոսի, 22 մինչև 'ի ծագս նորուն * Բայց յերկրէ քրմացն· զի ոչ ստացաւ զնոսա յովսէփ· քանզի տուրք տայր պարգևս քրմացն փարաւոն· և ուտէին զպարգևսն՝ զոր տայր նոցա փարաւոն· վասն այնորիկ ոչ վաճառեցին զերկիրն իւրեանց։
23 * Ասէ յովսէփ ցամենայն եգիպ՜տցիսն· ահա ստացայ զձեզ այսօր· և զերկիր ձեր փարաւոնի· առէ՛ք ձեզ սերմանս· 24 և սերմանեցէք զերկիրդ ։ * Եւ եղիցին արդիւնք դորա· և տաջի՛ք զհինգերորդ մասն փարաւոնի· և չորք մասունք ձեր եղիցին, 'ի սերմն երկրիդ· և 'ի կերակուր ձեզ՝ և ամենայն ընտանեաց ձերոց· և 'ի կերակուր տղայոց 25 ձերոց ։ * Եւ ասեն, կեցուցեր զմեզ· գտաք շնորհս առաջի տեառն մերոյ· և եղիցուք ծառայք փարաւոնի ։
26 * Եւ եդ նոցա յովսէփ օրէնս մինչև ցայսօր յերկրին եգիպտացւոց՝ հինգերորդել փարաւոնի ։ բաց յերկրէ 27 քրմացն՝ որ չէր փարաւոնի ։ * Եւ բնակեցաւ իսրայէլ յերկրին եգիպտացւոց յերկրին գեսեմ· և ժառանգեցան 'ի նմա· և աճեցին, և բազմացան 28 յոյժ ։ * Եւ եկեաց յակոբ յերկրին եգիպտացւոց ամս եօթն և տասն ։ և եղեն աւուրք ամաց կենաց նորա՝ հարիւր և քառասուն և եօթն ամ ։ 29 * Եւ մերձեցան աւուրք իսրայէլի մեռանելոյ· և կոչեաց զորդի իւր զյովսէփ՝ և ասէ ցնա· եթէ գտի շնորհս առաջի քո· ‖ դի՛ր զձեռն քո ընդ երանօք իմօք· և արասցես 'ի վերայ իմ ողորմութի՛, և ճշմարտութի՛, չթաղել զիս յեգիպ 30 տոս ։ * Այլ ննջեցից ընդ հարսն իմ· և բարձցես զիս յեգիպտոսէ· և թաղեսցես զիս 'ի գերեզմանի նոցա· և նա ասէ· ես արարից ըստ բանի քում ։
31 * Եւ ասէ երդուի՛ր ինձ· և երդուաւ նմա ։ ‖ և երկիրպագ իսրայէլ 'ի վ՜ր գլխոյ գաւազանի իւրոյ ։

‖ Ծն 24.2.

‖ Եբր 11.21.

## ԳԼ. ԽԸ.

1 Եւ եղև յետ բանիցս այսոցիկ· ազդ եղև յովսեփայ՝ եթէ յակոբ հայր քո՝ նեղեալ է ։ և առեալ յովսեփայ զերկուս որդիսն իւր ընդ իւր· զմա_

նասէ

նասէ և զեփրեմ, եկն առ յակոբ։ ազդ-
եցաւ յակոբայ՝ և ասեն։ *Ահա որդի 2
քո յովսէփ գայ առ քեզ։ և զօրացաւ
իսրայէլ՝ և նստաւ 'ի մահիճս։ *Եւ 3
‖ Ծնն. 28.13. ասէ յակոբ ցյովսէփ. Աստուած իմ‖ երևե-
ցաւ ինձ 'ի լուզ յերկրին քանանացւոց.
օրհնեաց զիս։ *Եւ ասէ ցիս. ահա 4
ես աճեցուցից զքեզ. և բազմացու-
ցից զքեզ. և արարից զքեզ 'ի ժողովս
ազգաց. և տաց քեզ զերկիրս զայս
'ի ժառանգութիւն յաւիտենական։
‖ Ծնն. 41.50. *‖Արդ երկու որդիքդ քո՝ որք եղեն 5
յեգիպտոս մինչև եկեալ էր իմ յե-
‖ Յեսու. 13.7. և 29. գիպտոս. իմ են՝ ‖ եփրեմ, և մանասէ.
իբրև զռուբէն և զշմաւոն եղիցին
ինձ։ *Եւ այլ ծնունդք՝ զոր ծնանի- 6
ցիս յետ այսորիկ. քեզ եղիցին. յանուն
եղբարց իւրեանց կոչեսցին 'ի նոցա
‖ Ծնն. 35.19. ժառանգութիւնս։ *‖Եւ ես յորժամ 7
գայի 'ի միջագետաց ասորւոց, մեռաւ
մայր քո ռաքէլ յերկրին քանանացւոց.
'ի մերձենալ ինձ յասպարէզ երկրին
քաբրաթայ. 'ի գալն յեփրաթայ. և
թաղեցի զնա յերկրի ասպարիզին.
այն է բեթղեհեմ։ *Իբրև ետես 8
իսրայէլ զորդիսն յովսեփու՝ ասէ. զի՞նչ
են սոքա քո։ *Ասէ յովսէփ ցհայրն իւր. 9
որդիք իմ են՝ զոր ետ ինձ Աստուած աստ։
և ասէ յակոբ. մատո՛ առ իս զդոսա. զի
օրհնեցից զդոսա։ *Եւ աչք իսրայէլի 10
ծանրացեալ էին 'ի ծերութենէ անտի.
և ոչ կարէր տեսանել. և մատոյց զնո-
սա առ նա. և համբուրեաց զնոսա. և 'ի
գիրկս իւր էառ զնոսա։ *Եւ ասէ իս- 11
րայէլ ցյովսէփ. ահա յերեսաց քոց ոչ
կարօտ եղէ. և եցոյց ինձ և Աստուած զզա-
ւակս քո։ *Եւ էհան զնոսա յովսէփ 'ի 12
ծնգաց նորա. և երկիր պագին նմա 'ի
վերայ երեսաց իւրեանց յերկիր. և
առեալ յովսեփայ զերկուս որդիսն իւր։
*Զեփրեմ ընդ աջմէ. 'ի ձախմէ իս- 13
րայէլի. և զմանասէ 'ի ձախմէ՝ յաջմէ
իսրայէլի. մատոյց զնոսա առ նա։
*Եւ ձգեալ իսրայէլի զաջ ձեռն իւր՝ 14
էարկ զգլխովն եփրեմայ. և նա էր
կրտսեր. և զձախն զգլխովն մանասէի.
և փոփոխեաց զձեռսն, զի մանասէ
‖ Եբր. 11.21. էր անդրանիկ։ *‖Եւ օրհնեաց զնո- 15
սա և ասէ՝ Աստուած որում հաճոյ եղեն հարքն
իմ առաջի նորա աբրահամ և իսահակ.
Աստուած որ կերակրէ զիս 'ի մանկութենէ
‖ Ծնն. 31.29. և 32.1. իմմէ մինչև ցայսօր։ *‖Հրեշտակն, որ 16
Մտթ. 18.10. փրկեաց զիս յամ չարեաց. օրհնեսցէ
զմանկունս զայսոսիկ։ և կոչեսցի 'ի
սոսա անուն իմ. և անուն հարց իմոց.
աբրահամու և իսահակայ. և օրհնես-
ցին 'ի բազմութիւն յոյժ 'ի վերայ երկրի։
*Եւ տեսեալ յովսեփայ եթէ էարկ 17
հայրն զաջ իւր զգլխովն եփրեմի՝ ծանր
թուեցաւ նմա. և օգնեաց յովսէփ ձե-
ռին հօրն իւրոյ. հանել զնա 'ի գլխոյն
18 եփրեմի, 'ի գլուխն մանասէի։ *Ասէ
յովսէփ ցհայրն իւր. ոչ այդպէս է հայր.
քանզի սա է անդրանիկ. դիր զաջ քո
19 'ի վերայ գլխոյ սորա։ *Եւ ոչ կամեցաւ
հայրն նորա. այլ ասէ՝ գիտեմ որդեակ,
գիտեմ. և դա եղիցի 'ի ժողովուրդ.
և դա բարձրասցի. այլ եղբայր դորա
կրտսեր՝ եղիցի մեծ քան զդա։ և զա-
ւակ սորա եղիցի 'ի բազմութիւն ազգաց։
20 *Եւ օրհնեաց զնոսա յաւուր յայնմիկ՝
և ասէ. 'ի ձեզ օրհնեսցի իսրայէլ։ ա-
սասցեն, թէ արասցէ զքեզ Աստուած իբրև
զեփրեմ, և իբրև զմանասէ։ և եդ
21 զեփրեմ յառաջ քան զմանասէ։ *Եւ
ասէ իսրայէլ ցյովսէփ. ես ահաւասիկ
մեռանիմ։ և Աստուած եղիցի ընդ ձեզ. և
դարձուսցէ զձեզ յերկիր հարցն ձե-
22 րոց։ *Եւ ես ‖ ետու քեզ զսիկիմ ‖ Յեսու. 15.7. և 16.1.
սեպհական. արտաքոյ եղբարց քոց.
զոր առի 'ի ձեռաց ‖ ամօրհացւոց սրով ‖ Յեսու. 24.8.
իմով՝ և աղեղամբ։

## ԳԼ. ԽԹ.

1 Կոչեաց յակոբ զորդիսն իւր, և ասէ,
ժողովեցարո՛ւք, զի պատմեցից
ձեզ ինչ. որ պատահիցի ձեզ 'ի վախ-
2 ճանի աւուրց։ *Ժողովեցարո՛ւք, և
լուարո՛ւք որդիք յակոբայ. լուարո՛ւք
3 իսրայէլի հօր ձերում։ *‖ Ռուբէն ‖ 2. Օրէ. 33. 6.
անդրանիկ իմ. դու զօրութիւն իմ. և
սկիզբն որդւոց։ խստութեամբ գնայեր.
և խստութեամբ յանդգնութեամբ թշնամա-
4 նեցեր։ *Իբրև զջուր մի՛ եռասցես.
‖ զի ելեր յանկողինս հօր քո. յայնժամ ‖ Ծնն. 35. 22.
պղծեցեր զանկողինն՝ յոր ելեր։
5 *Շմաւոն և ղևի եղբարք. կատարե- 1. Մնաց. 5. 1.
ցին զանիրաւութիւն 'ի կամաց իւրեանց։
6 *Ի խորհուրդս նոցա մի՛ մտցէ անձն
իմ. և 'ի ժողովս նոցա ոչ հաճեսցին
միտք իմ։‖ զի սրտմտութեամբ իւրեանց ‖ Ծնն. 34.25.
սպանին զարս. և ցանկութեամբ իւրեանց
կարթակոտոր արարին զցուլս։
7 *Անիծեալ սրտմտութիւն նոցա, զի յան-
դուգն էր. և ոխութիւն նոցա, զի խիստ
էր։ ‖ բաժանեցից զնոսա 'ի մէջ յակո- ‖ Յեսու. 19.1. և 21.1.
բայ. և ցրուեցից զնոսա 'ի մէջ իսրայե-
8 լի։ *Յուդա՛ զքեզ օրհնեսցեն եղ-
բարք քո։ ձեռք քո 'ի վերայ թիկանց ‖ 1. Մնաց. 5.2.
թշնամեաց քոց։ և երկիր պագցեն
9 քեզ որդիք հօր քոյ։ *‖ Կորիւն առիւ- Մտթ. 2. 6.
ծու յուդա. 'ի շառաւիղէ ելեր որ-
դեակ իմ. ելեր՝ բազմեցար՝ ննջեցեր ‖ Յօհ. 1.45. և 7.42.
իբրև զառիւծ. և իբրև զկորիւն առիւ-
10 ծու. ո՛ յարուցանիցէ զնա։ *‖ Մի՛ պա- Միքէա. 5.2.
կասեսցի իշխան 'ի յուդայ. և մի՛ պետ
յե-

յերանաց նորա․ մինչև եկեսցեն նմա հանդերձեալքն․ և նա է ակնկալութիւն հեթանոսաց ։ 11 * Կապեսցէ զորթոյ զյաւանակ իւր․ և զգնտակէն զյաւանակ իշոյն․ լուասցէ գինեաւ զպատմուճան իւր ․ և արեամբ խաղողոյ զհանդերձ իւր ։ 12 * Զուարթագինք են աչք նորա ’ի գինւոյ․ և սպիտակ ատամունք իւր քան զկաթն ։ 13 * Զաբուղոն յեզեր ծովուց բնակեսցի՝ և ինքն նաւահանգիստ նաւուց․ և ձգեսցի մինչև ցսիդոն ։ 14 * Իսաքար բարւոյ ցանկացաւ․ հանգուցեալ ’ի մէջ վիճակաց ։ 15 * Տեսեալ զհանգիստն զի գեղեցիկ էր․ և զերկիրն զի պարարտ․ եդ զուս իւր յաշխատել․ և եղև այր արդիւնարար ։ 16 * Դան դատեսցէ զժողովուրդ իւր ․ իբրև զմի այր ’ի մէջ իսրայելի ։ 17 * Եւ եղիցի դան օձ դարանակալ ’ի ճանապարհի ․ հարկանել զգարշապար երիվարի․ և ընկենուլ զհեծեալն յետս ։ 18 * Եւ մնալ փրկութեան տն ։ 19 * Գադ հինի ելցէ․ և ինքն ելցէ հինիւ զհետ նորա ։ 20 * Ասերայ, պարարտ հաց իւր․ և ինքն տացէ կերակուր իշխանաց ։ 21 * Նեփթաղիմ ծառ բարձրացեալ ․ աճեցուցանել արմըտեօք․ զգեցուցանել արմատեօք զգեղեցկութիւն ։ 22 * ‖ Որդեակ աճեցեալ յովսէփ․ որդեակ աճեցեալ նախանձելի․ որդեակ մատաղ, առ իս դարձիր․ զոր բանսարկուք բամբասէին ։ 23 * Եւ դատափետ առնէին, և ոխանային ընդ նմա արք աղեղանց ։ 24 * Եւ փշրեցան զօրութբ աղեղունք իւրեանց․ և լուծան ջիլք բազկաց նց․ ձեռամբ հզօրին յակոբայ․ անտի որ զօրացոյց զիէլ։ 25 * Ած հօր քոյ օգնեաց քեզ՝ և Ած իմ օրհնեաց զքեզ յօրհնութիւն երկնից ’ի վերուստ ․ և զօրհնութիւն երկրի լի ամիւ․ վս օրհնութեան ստեանց և արգանտի ։ 26 * Օրհնութեանց հօր քոյ և մօր քոյ․ որք զօրացան քան զօրհնութիւս լերանց մշտնջենաւորաց․ և քան զօրհնութիւս բլրոց յաւիտենականաց․ եղիցին ’ի վերայ գլխոյ յովսէփայ․ և ’ի վր գլխոյ եղբարցն, որոց առաջնորդեաց ։ 27 * Բենիամին, գայլ յափշտակօղ․ զայգունն դեռևս ուտիցէ․ և առ երեկս բաշխեսցէ կերակուր ։ 28 * Ամենեքին սոքա ազգք յակոբայ երկոտասանք․ և այս է՝ զոր խօսեցաւ ընդ նոսա հայր իւրեանց ․ և օրհնեաց զնոսա իւրաքանչիւր ըստ օրհնութեան իւրում ։ 29 * Օրհնեաց զնոսա՝ և պատուիրեաց նոցա․ և ասէ ցնոսա․ և ես յաւելում առ ժողովուրդ իմ ։ Թաղեցէք զիս ընդ հարս իմ յայրի անդ․ որ է յագարակին եփրոնի քետացւոյ․ յայրին որ 30 յանդի անդ է ’ի կրկնում ։ * Յանդիման մամբրէի․ յերկրին քանանացւոց՝ ‖ զոր ստացաւ աբրահամ զայրն յեփրոնէ քետացւոյ․ ’ի ստացուած շիրմի ։ 31 * Անդ թաղեցին զաբրահամ, և զսարրա զկին նր ։ անդ թաղեցին զիսահակ, և զռեբեկա զկին նորա ։ անդ թաղեցին զլիա ․ ’ի ստացուածի ագարակին, և այրին որ է ’ի նմա , առ յորդւոցն քետայ ։ 32 * Եւ դադարեաց յակոբ ’ի պատուիրելոյ որդւոցն իւրոց ։ և առեալ զոտսն իւր անդրէն ’ի մահիճս իւր՝ պակասեցաւ ․ և յաւելաւ ’ի ժողովուրդ իւր ։

‖1. Մնա 5.1.

‖ Ծն. 23.17.

## ԳԼ ։ Ծ ։

1 Եւ անկեալ յովսէփ ’ի վր երեսաց հօր իւրոյ, ելաց զնա․ և համբուրեաց զնա ։ 2 * Եւ հրաման ետ յովսէփ ծառայից իւրոց դիազարդաց, պատել զհայրն իւր ։ 3 * Եւ պատեցին զխապատիկքն զիսրայէլ ։ և լցան նորա աւուրք քառասուն․ զի այնպէս թուէին աւուրք թաղելոյ ։ և սուգ էառ զմն նր եգիպտոս աւուրս եօթանասուն ։ 4 * Եւ իբրև անցին աւուրք սգոյն․ խօսեցաւ յովսէփ ընդ իշխանսն փարաւոնի, և ասէ ․ եթէ գտի շնորհս առաջի ձեր․ խօսեցարուք ընդ փարաւոնի, և ասացէք ։ 5 * Հայր իմ երդմնեցոյց զիս, և ասէ՝ ահաւասիկ ես մեռանիմ ․ ’ի շիրմի անդ ‖ զոր փորեցի ես ինձ յերկրին քանանացւոց ․ անդ թաղեսցես զիս ․ արդ ելեալ թաղեցից զհայրն իմ, և եկից ։ 6 * Եւ ասէ փարաւոն․ ել թաղեա զհայրն քո ․ որպէս և երդմնեցոյց զքեզ ։ 7 * Եւ ել յովսէփ թաղել զհայր իւր ․ ելին ընդ նմա և ամենայն ծառայք փարաւոնի ․ և ծերք տան նորա․ և ամենայն ծերք երկրին եգիպտացւոց ։ 8 * Եւ համօրէն տունն յովսէփայ ․ և եղբարք նորա․ և ամենայն հայրենի բնակութիւն նորա ։ և զազգատոհմն․ և զոչխար՝ և զարջառ թողին յերկրին գեսեմ ։ 9 * Ելին ընդ նմա և կառք և հեծեալք ․ և եղեն բանակ մեծ յոյժ ։ 10 * Եւ հասին ’ի կալն ատադայ․ որ է յայնկոյս յորդանանու ․ և կոծեցան զնա անդ կոծ մեծ՝ և սաստիկ յոյժ ։ և արար հօր իւրում սուգ զեօթն օր ։ 11 * Տեսին բնակիչք երկրին քանանացւոց զսուգն ’ի կալն ատադայ․ և ասեն․ սուգ մեծ է եգիպտացւոց ․ վասն այնորիկ կոչեաց զանունն նորա սուգ եգիպտոսի․ որ է յայնկոյս յորդանանու ։ 12 * Եւ արարին նմա այնպէս որդիքն իսրայելի ․ որպէս պա_

‖ Ծն. 47.29.

տուի_

տուիրեաց նոցա ։ ¹³ *Բարձին զնա . և թաղեցին զնա անդ ։ և տարան զնա որդիքն իւր յերկիրն քանանացւոց։ և թաղեցին յայրին կրկնում. ‖զոր ստացաւ աբրահամ ՚ի ստացուածս շիրմի յեփրոնէ քետացւոյ. յանդիման մամբրէի։ ¹⁴ *Եւ դարձաւ յովսէփ յեգիպտոս . ինքն և եղբարք իւր. և ամենեքին որք ելեալ էին ընդ նմա թաղել զհայրն նր։ ¹⁵ *Իբրև տեսին եղբարքն յովսէփայ . եթէ մեռաւ հայր նոցա ։ ասեն , գուցէ ոխս ունիցի ընդ մեզ յովսէփ. և հատուցանիցէ մեզ հատուցումն զամենայն չարեացն՝ զոր անցուցաք ընդ նա ։ ¹⁶ *Եկին առ յովսէփ՝ և ասեն. հայր քո երդմնեցոյց զմեզ՝ մինչ չև վախճանեալ էր նորա։ ¹⁷ *Ասէ՝ այսպէս ասասջիք ց յովսէփ։ թողցես դոցա զյանցանսն, և զմեղս իւրեանց . զի չարիս անցուցին ընդ քեզ ։ և արդ. ներեա՛ յանցանաց ծառայից Այ հօր քոյ։ և լաց յովսէփ վասն բանիցն՝ զոր խօսեցան ընդ նմա։ ¹⁸ *Եւ եկեալ առ նա եղբարցն իւրոց անկան առաջի նորա , և ասեն. ահաւասիկ մեք ծառայք քո եմք ։ ¹⁹ *Եւ ասէ ցնոսա յովսէփ՝ մի՛ երկնչիք ։ քանզի և ես Այ ²⁰ եմ ։ *‖Դուք խորհեցայք զինէն ՚ի չարութի . և Ած խորհեցաւ վն իմ ՚ի բարութի . որպէս եղև իսկ յաւուր յայսմիկ , զի կերակրեսցի ժողովուրդ բազում։ և ասէ ցնս ։ ²¹ *Մի՛ երկնչիք՝ ‖Ես կերակրեցից զձեզ՝ և զտունս ձեր. և մխիթարեաց զնոսա . և սփոփեաց զսիրտս նոցա ։ ²² *Եւ բնակեցաւ յովսէփ յեգիպտոս՝ ինքն և եղբարք իւր. և ամ տուն հօր իւրոյ . և եկեաց յովսէփ ամս հարիւր և տասն . և ետես յովսէփ զորդիս եփրեմի մինչև յերրորդ ազգ։ և ‖որդիք մաքիրայ որդւոյ մանասէի ծնան յերանս յովսէփայ։ ²³ *Եւ խօսեցաւ յովսէփ ‖ընդ եղբարս իւր՝ և ասէ ։ ես աւասիկ մեռանիմ ։ այցելութեամբ այց արասցէ ձեզ Ած , և հանցէ զձեզ յերկրէս յայսմանէ յերկիր , զոր երդուաւ Ած տալ հարցն մերոց . աբրահամու իսահակայ և յակոբայ ։ ²⁴ *Եւ երդմնեցոյց յովսէփ զորդիսն իէլի՝ և ասէ ։ յայցելութեան յորում առնիցէ ձեզ Ած՝ ‖ հանջիք և զիմ ոսկերս աստի ընդ ձեզ ։ ²⁵ *Եւ վախճանեցաւ յովսէփ ամաց հարիւր և տասանց . և թաղեցին զնա . և եդին զնա ՚ի տապանի յեգիպտոս ։

‖Գործ. 7. 16.

‖Վեր. 23. 16.

‖Վեր. 45. 5.

‖Վեր. 47. 12.

‖Թուոց 32. 39.

‖Եբրա. 11. 22.

‖Ելից. 13. 19.

Յեսու. 24. 32.



Եւ ընկէց զնա մայրն նորա 'ի խաղ մի գետոյն։



Երեւեցաւ նմ հրեշտակ տն բոցով հրոյ 'ի մորենւոջն։

# ԳԻՐՔ ԵԼԻՑ։

## ՈՐ ԱՍԻ ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑԻՈՑՆ ՎԷԷԼԼԷ ՇԷՄՕԹ։

Գլուխ Առաջներորդ։

Ծննդ. 46.8.

1 ԱՅՍ ԵՆ ԱՆՈՒԱՆՔ որդւոցն Իսրայէլի մտելոց յեգիպտոս, համագերձ յակոբաւ հարբն իւրեանց. իւրաքանչիւր ոք համօրինն տանց իւրեանց մտանէին։ 2 * Ռուբէն, Շմաւօն, Ղեւի, Յուդա։ 3 * Իսաքար, Զաբուղօն, և Բենիամին։ 4 * Դան, և Նեփթաղիմ, Գադ, և Ասեր։ 5 * Եւ էին ամ ոգիք ելեալք 'ի յակոբայ, եօթանասուն և հինգ ոգի. և Յովսէփ էր յեգիպտոս։ 6 * Եւ վախճանեցաւ Յովսէփ՝ և ամ եղբարք նր. և ամ ազգն այն։ 7 * Եւ որդիքն Իլի աճեցին և յաւելան. բազմանային, և զօրանային յոյժ. զի 8 բազմացուցանէր զնա երկիրն։ * Եկաց այլ թագաւոր՝ որ ոչ գիտէր զՅովսէփ։ 9 * Եւ ասէ ցազգն իւր. ահա ազգ որդւոցն Իսրայէլի մեծ է զօրութբ. և զօրանայ քան զմեզ։ 10 * Արդ՝ եկայք հնարեսցուք ինչ նոցա. գուցէ բազմանայցեն. և յորժամ դիպեսցի մեզ պատերազմ, յաւելցին և նոքա 'ի թշնամիսն. և մարտուցեալ ընդ մեզ՝ ելանիցեն յերկրէ աստի։ 11 * Եւ կացոյց 'ի վր նոցա գործավարս, զի չարչարեսցեն զնոսա 'ի գործ. և շինեցին քաղաքս ամուրս փարաւոնի. զՓիթովն, և զՌամասէս, և զՕն, որ է Արեգ քաղաք։ 12 * Եւ որչափ ճնշէին զնոսա, այնչափ առաւել բազմանային, և զօրանային յոյժ։ 13 * Եւ գարշեցուցանէին եգիպտացիքն զորդիսն Իսրայէլի։ և յաղթահարէին եգիպտացիքն զորդիսն Իսրայէլի բռնու-

Գործք. 7.17.

նութեամբ ։ *14 Եւ կեղեքէին զկեանս նոցա 'ի գործ խիստ կաւոյ՝ և աղիւսարկէ՝ և յամենայն գործ դաշտաց․ ըստ ամ՟ գործոյ իւրեանց․ որով ծառայեցուցանէին զնոսա բռնութեամբ ։ *15 Եւ խօսեցաւ արքայն եգիպտացւոց ընդ ծնուցիչսն եբրայեցւոց․ ընդ միումն որում անուն էր սեպփորա․ և անուն երկրորդին փուա ։ *16 Եւ ասէ՝ յորժամ ծնուցանիցէք զկանայս եբրայեցիս, և իցեն մերձ 'ի ծնունդս, թէ արու իցէ՝ սպանջիք զնա․ և թէ էգ՝ ապրեցուցանիցէք ։ *17 Եւ երկեան ծնուցիչքն յԱ՟Յ․ և ոչ արարին՝ որպէս և հրաման ետ նոցա արքայն եգիպտացւոց․ և ապրեցուցանէին զարուսն ։ *18 Կոչեաց արքայն եգիպտացւոց զծնուցիչսն՝ և ասէ ցնոսա․ զի՞ է զի արարիք զիրսն զայսոսիկ․ և ապրեցուցիք զարուս ։ *19 Եւ ասեն ծնուցիչքն ցփարաւոն․ ոչ իբրև զկանայս եգիպտացիս են եբրայեցիքն․ քանզի նախ ծնանին, մինչչև մտեալ առ նոսա մանկաբարձաց՝ ծնանին ։ *20 Եւ բարի առնէր Ա՟Ծ մանկաբարձացն ։ և բազմանայր ժողովուրդն, և զօրանայր յոյժ ։ *21 Քանզի երկեան մանկաբարձքն՝ և արարին իւրեանց տունս ։ *22 Հրաման ետ փարաւոն ամենայն ժողովրդեանն իւրում, և ասէ․ զամենայն արու՝ որ ծնանի եբրայեցւոց՝ 'ի գետ ընկեսջիք․ և զամ՟ էգ ապրեցուցանիջիք ։

## Գլ․ Բ․

‖ Ելից․ 6.20.

‖ Եբրայ․ 11.23.

*1* Եւ Էր այր ոմն յազգէ ղևեայ ‖ որ էառ իւր կին 'ի դստերաց անտի ղևեայ ։ *2 Եւ յղացաւ՝ ‖ ծնաւ արու ։ և տեսանէին զնա կայտառ․ և թաքուցին զնա ամիս երիս ։ *3 Եւ իբրև ոչ ևս կարէին թաքուցանել, էառ մայրն նորա տապանակ պրտուեայ․ և ծեփեաց զնա կպրաձիւթով․ և եդ 'ի նմա զմանուկն․ և ընկէց զայն 'ի խաղ մի առ ափն գետոյն ։ *4 Եւ դիտէր քոյր նորա 'ի հեռաստանէ, տեսանել թէ զինչ անցք անցանիցեն ընդ նա ։ *5 ‖ Եւ իջեալ դուստրն փարաւոնի լուանալ 'ի գետն․ և նաժիշտք նր՟ շրջէին առ գետովն ։ և տեսեալ զտապանակն 'ի խաղի անդ, առաքեաց զնաժիշտն առնուլ զնա ։ *6 Եբաց՝ և ետես զմանուկն ։ և լայր մանուկն 'ի տապանակի անդ ։ խնայեաց զնովաւ դուստրն փարաւոնի, և ասէ․ 'ի մանկանց եբրայեցւոց է ։ *7 Եւ ասէ քոյրն նորա ցդուստրն փարաւոնի․ կամի՞ս զի կոչեցից քեզ կին մի դայեակ 'ի

‖ Գործ․ 7.21.

Եբրայ․ 11. 23.

հեբրայեցւոց անտի․ և սնուցանիցէ քեզ զմանուկդ ։ *8 Եւ ասէ դուստրն փարաւոնի՝ երթ ։ գնաց աղջիկն և կոչեաց զմայր մանկանն ։ *9 Եւ ասէ ցնա դուստրն փարաւոնի ։ առ զմանուկդ․ և սնո՛ ինձ զդա․ և ես տաց քեզ զվարձս քո ։ և էառ կինն զմանուկն՝ և սնոյց զնա ։ իբրև հաստատեցաւ մանուկն, էած զնա առ դուստրն փարաւոնի ։ *10 Եւ եղև նմա յորդեգիրս․ և անուանեաց զանուն նորա մովսէս ։ ասէ, 'ի ջրոյ անտի հանի զդա ։ *11 Եւ եղև յետ աւուրց բազմաց․ իբրև եղև մեծ մովսէս․ ‖ ել առ եղբարսն իւր որդիսն իսրայէլի ։ հայեցեալ 'ի չարչարանս նոցա․ ետես զայր մի եգիպտացի, զի հարկանէր զոմն եբրայեցի յեղբարց իւրոց՝ յորդւոցն իսրայէլի ։ *12 Հայեցեալ յայսկոյս, յայնկոյս՝ ոչ զոք տեսանէր․ եհար զեգիպտացին․ և ծածկեաց զնա ընդ աւազով ։ *13 Եւ ելեալ յերկրորդում՝ աւուր․ տեսանէր երկուս արս եբրայեցիս ընդ միմեանս մարտուցեալս․ և ասէ ցայն՝ որ զրկէրն․ ընդէ՞ր հարկանես զընկերդ ։ *14 Եւ նա ասէ, ո՞ կացոյց զքեզ իշխան և դատաւոր 'ի վ՟ր մեր ։ եթէ սպանանել զիս կամիցիս, որ՟ և երէկ սպաներ զեգիպտացին․ զարհի հարաւ մովսէս՝ և ասէ․ թէ այնպ՟ յայտնի եղև բանն ։ *15 Եւ լուաւ փարաւոն զբանն․ և խնդրէր սպանանել զմովսէս․ և փախեաւ մովսէս յերեսաց փարաւոնի, և բնակեցաւ յերկրին մադիամու ։ և եկեալ յերկիրն մադիամու՝ նստաւ առ ջրհորի միում ։ *16 Եւ քրմին մադիամացւոց էին դստերք եօթն․ որք արածէին զխաշինս հօր իւրեանց․ եկեալ էին հանել զջուր, մինչև լցին զաւազանն, արբուցանել խաշանց հօրն իւրեանց ։ *17 Եւ եկեալ այլ հովիւք՝ մերժեցին զնս՟ 'ի բաց․ յարուցեալ մովսէս թափեաց զնս՟․ և էհան նց՟ ջուր, և արբոյց զխաշինս նոցա ։ *18 Եւ եկին առ հռագուէլ հայրն իւրեանց ։ և ասէ ցնոսա․ զի՞ է զի յարևու եկիք այսօր ։ *19 Եւ նոքա ասեն․ այր մի եգիպտացի փրկեաց զմեզ 'ի հովուաց անտի․ էհան ջուր․ և արբոյց խաշանցս մերոց ։ *20 Եւ նա ասէ ցդստերսն իւր․ և ու՞ր է․ ընդէ՞ր թողիք զայրն․ արդ կոչեցէք զնա՝ զի կերիցէ հաց ։ *21 Եւ բնակեցաւ մովսէս առ առնն, ‖ և ետ զսեպփորա դուստր իւր մովսէսի կնութեան ։ *22 Եւ յղացաւ կինն՝ և ծնաւ որդի․ և անուանեաց զանուն նր՟ մովսէս, գերսամ․ ասէ՝ զի պանդուխտ եմ ես յօտար երկրի ։ *23 Եւ յետ աւուրց բազմաց մեռաւ

‖ Եբրայ․ 11.24.

Եղեալէին

‖ Ելից․ 18. 2.3. 1.Մնաց 23.15.

թագաւորն եգիպտացւոց. և տառապէին որդիքն իսրայէլի ՚ի գործոց անտի. և աղաղակէին ՚ի վեր: *Եւ ել 24 աղաղակ նոցա առաջի Ա̅յ ՚ի գործոց անտի: և լուաւ Տ̅ր հեծութեան նոցա: և յիշեաց Ա̅ծ զուխտ իւր, որ ընդ աբրահամու և իսահակայ և յակոբու: *Եւ հայեցաւ Տ̅ր յորդիսն իսրայէ- 25 լի. և ծանուցաւ նոցա:

Գ.Լ: Գ.:

Եւ մովսէս արածէր զխաշինս յո- 1 թորայ աներոյ իւրոյ՝ քրմին մադիանացւոց. և եած զխաշինսն յանապատ: և եկն ՚ի լեառն Ա̅յ ՚ի քորեբ: *‖Եւ երևեցաւ նմա հրեշտակ Տ̅ն բո- 2 ցով հրոյ ՚ի միջոյ մորենւոյն: և տեսանէր, զի մորենին վառեալէր հրով. և ոչ այրիւր մորենին: *Եւ ասէ մովսէս, 3 անցեալ տեսից զտեսիլն մեծ զայն, զի՞ է՝ զի ոչ այրեցի մորենին: *Իբրև 4 ետես, եթէ մերձենայ տեսանել, կոչեաց զնա Տ̅ր ՚ի միջոյ մորենւոյն, և ասէ. մովսէ՞ս, մովսէս. և նա ասէ, զի՞ է: *Եւ ասէ՝ մի մերձենար այսր. լո՛յծ 5 զկօշիկս քո յոտից քոց. զի տեղիդ յոր ում կաս դու ՚ի դմա՝ երկիր սուրբ է: *Եւ ասէ ցնա, ‖ես եմ Ա̅ծ հօր քոյ, 6 Ա̅ծ աբրահամու. և Ա̅ծ իսահակայ. և Ա̅ծ յակոբայ: և դարձոյց մովսէս զերեսս իւր. քանզի երկնչէր հայել առաջի Տ̅ն: *Եւ ասէ Տ̅ր ցմովսէս: տե- 7 սանելով տեսի զչարչարանս ժողովրդեան իմոյ՝ որ յեգիպտոս: *Եւ լուայ 8 աղաղակի նոցա ՚ի գործավարացն իւրեանց: զի գիտեմ զվիշտս նոցա. և իջի փրկել զնոսա ՚ի ձեռաց եգիպտացւոցն. և հանել զնոսա յերկրէ յայնմանէ. և տանել զնոսա յերկիր բարի և ընդարձակ. յերկիր, որ բղխէ զկաթն և զմեղր: յերկիրն քանանացւոց. և քետացւոց. և ամօրհացւոց. և փերեզացւոց՝ և խևացւոց. և գերգեսացւոց. և յեբուսացւոց: *Եւ 9 արդ աւասիկ աղաղակ որդւոցն իսրայէլի հասեալ է առ իս. և տեսի ես զնեղութիւն՝ զոր նեղեն զնոսա եգիպտացիքն: *Եւ արդ՝ եկ առաքեցից 10 զքեզ առ փարաւոն արքայ եգիպտացւոց՝ և հանցես զժողովուրդ իմ, զորդիսն Ի̅Ղ̅Ի յերկրէն եգիպտացւոց: *Եւ ասէ մովսէս ցՏ̅ր. ո՞վ եմ ես՝ զի եր 11 թայց եմ առ փարաւոն արքայ եգիպտացւոց. և հանիցեմ զորդիսն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց: *Եւ ասէ՝ 12 ես եղէց ընդ քեզ: և այս եղիցի քեզ նշան. թէ ես առաքեցի զքեզ հանել զժողովուրդ իմ յեգիպտոսէ. և պաշ- 13 տեսջիք զԱ̅ծ ՚ի լերինս յայսմիկ: *Եւ ասէ մովսէս ցԱ̅ծ: ահա ես երթեալ առ որդիսն իսրայէլի, ասիցեմ ցնոսա, Ա̅ծ հարցն ձերոց առաքեաց զիս առ ձեզ. և հարցանիցեն զիս՝ թէ զի՞նչ է անուն նորա: զի՞նչ ասացից ցնոսա: 14 *Եւ ասէ Ա̅ծ ցմովսէս: ես եմ Ա̅ծ որ էն: և ասէ՝ այսպէս ասասցես ցորդիս իսրայէլի. որ էն առաքեաց զիս 15 առ ձեզ: *Եւ ասէ դարձեալ Ա̅ծ ցմովսէս: այսպէս ասասցես ցորդիսն իսրայէլի: Տ̅ր Ա̅ծ հարցն ձերոց, Ա̅ծ աբրահամու, և Ա̅ծ իսահակայ, և Ա̅ծ յակոբայ առաքեաց զիս առ ձեզ: այս է անուն իմ յաւիտենական. և 16 յիշատակ յազգաց յազգս: *Արդ՝ երթեալ ժողովեսցես զծերակոյտ որդւոցն իսրայէլի, և ասասցես ցնոսա: Տ̅ր Ա̅ծ հարցն ձերոց երևեցաւ ինձ. Ա̅ծ աբրահամու, և Ա̅ծ իսահակայ, և Ա̅ծ յակոբայ՝ և ասէ: այցելութեամբ այց արարի ձեզ: և որինչ անցք անցին 17 ընդ ձեզ յեգիպտոս: *Եւ ասեմ, հանից զձեզ յերկրէ չարչարանաց եգիպտացւոցն, յերկիրն քանանացւոց. և քետացւոց, և ամօրհացւոց. և փերեզացւոց. և գերգեսացւոց. և խևացւոց. և յեբուսացւոց. յերկիր որ բղխէ 18 զմեղր և զկաթն: *Եւ լուիցեն ձայնի քում. և մտցես դու, և ծերակոյտ որդւոցն իսրայէլի առ փարաւոն արքայ եգիպտացւոց. և ասասցես ցնա: Տ̅ր Ա̅ծ եբրայեցւոց կոչէ զմեզ առ ինքն. արդ՝ ‖երթիցուք մեք երից աւուրց ճանապարհ յանապատ. զի զոհեսցուք Տ̅ն Ա̅յ մերում: *Եւ ես գի- 19 տեմ: եթէ ոչ թողուցու զձեզ արքայն եգիպտացւոց գնալ, եթէ ոչ հզօր ձեռամբ: *Եւ ձգեալ զձեռն իմ հա- 20 րից զեգիպտոս ամենայն սքանչելեօք իմովք՝ զոր արարից ՚ի նոսա. և ապա արձակեսցէ զձեզ: *Եւ տաց շնորհս 21 ժողովրդեան իմոյ առաջի եգիպտացւոցն, ‖և յորժամ ելանիցէք, մի ելանիցէք դատարկ: *Այլ խնդրեսցէ 22 կին ՚ի դրացւոյ և յերդակցէ իւրմէ անօթս ոսկւոյ. և անօթս արծաթոյ. և հանդերձս. և զարդարեսջիք զուստերս՝ և զդստերս ձեր: և դաւաճանեսջիք զեգիպտացիսն:

Գ.Լ: Դ.:

Պատասխանի ետ մովսէս՝ և ասէ: 1 եթէ ոչ հաւատայցեն ինձ, և ոչ լուիցեն ձայնի իմում, քանզի ասիցեն, թէ չիք երևեալ քեզ Ա̅ծ, զի՞նչ ասացից ցնոսա: *Ասէ ցնա Տ̅ր, զի՞նչ է 2 այդ՝ որ ՚ի ձեռին քում է: և նա ասէ. գաւազ-

‖ Գործ. 7.30.

‖ Մատ. 22.32. Մարկ. 12.26. Ղուկ. 20.37.

‖ Ա... 8.27.

‖ Ա... 11.2. 12.36.

գաւազան։ 3 * Եւ ասէ, ընկեա՛ զդա ՚ի գետին. ընկէց զնա ՚ի գետին. և եղև օձ, և փախեաւ մովսէս ՚ի նմանէ։

4 * Եւ ասէ Տր ցմովսէս. ձգեա՛ զձեռն քո և բո՛ւռն հար զտտանէն. և ձգեաց զձեռն իւր, և բուռն էհար զտտանէն. և եղև գաւազան ՚ի ձեռին նր։

5 * Զի հաւատասցեն քեզ՝ եթէ երևեալ է քեզ Տր ԱԾ հարցն նոցա. ԱԾ աբրահամու, և ԱԾ իսահակայ, և ԱԾ յակոբայ։

6 * Ասէ ցնա դարձեալ Տր. արկ զձեռն քո ՚ի ծոց քո. և էարկ զձեռն իւր ՚ի ծոց իւր, և եհան զնա ՚ի ծոցոյ իւրմէ, և եղև ձեռն նր բորոտ իբրև զձիւն։

7 * Եւ ասէ՝ արկ զձեռն քո ՚ի ծոց քո. և էարկ զձեռն իւր ՚ի ծոց իւր. և եհան զնա ՚ի ծոցոյ իւրմէ, և դարձեալ անդրէն ՚ի նոյն հաստատեցաւ ՚ի գոյն մարմնոյ իւրոյ։

8 * Եւ եթէ ոչ հաւատայցեն քեզ՝ և ոչ լուիցեն ձայնի առաջնոյ նշանին, հաւատասցեն քեզ ձայնի երկրորդի նշանիդ։

9 * Եւ եղիցի եթէ ոչ հաւատասցեն երկոցունց նշանացդ այդոցիկ, և ոչ լուիցեն ձայնի քում, առցես ջուր ՚ի գետոյն՝ և հեղցես ՚ի ցամաքի. և եղիցի ջուրն՝ զոր առնուցուս ՚ի գետոյ անտի՝ արիւն ՚ի ցամաքին։

10 * Եւ ասէ մովսէս ցՏր. աղաչեմ՝ զքեզ Տր, չեմ բաւական, որպէս թէ յերէկէ և յեռանդէ, և ո՛չ յորմէհետէ սկսար խօսել ընդ ծառայի քում. զի նրբաձայն, և ծանրալեզու եմ ես։

11 * Եւ ասէ Տր ցմովսէս. ո՛վ ետ բերան մարդոյ, կամ ո՛ արար զխուլն և զհամր. զականատեսն և զկոյր, ո՛չ ապաքէն ես ԱԾ։

12 * Եւ արդ՝ երթ, ‖ և ես բացից զբերան քո. և խելամուտ արարից զքեզ՝ զոր պարտ իցէ խօսել։

13 * Եւ ասէ, աղաչեմ զքեզ Տր. ա՛ռ քեզ ՚ի ձեռն զայլ ոք զօրաւոր՝ զոր առաքիցես։

14 * Եւ բարկացաւ Տր սրտմտութեամբ ՚ի վերայ մովսէսի և ասէ. ո՛չ ահաւանիկ կա՛յ ահարոն եղբայր քո ղևտացի. գիտեմ՝ զի խօսելով խօսեսցի նա ընդ քեզ. և ահա նա ելցէ ընդ առաջ քոյ. և ՚ի տեսանելն զքեզ բերկրեսցի ՚ի միտս իւր։

15 * Եւ խօսեսցիս ընդ նմա, և տացես զպատգամս իմ ՚ի բերան նորա. և ես բացից զբերան քո՝ և զբերան նր ‖ և խելամուտ արարից զձեզ՝ զինչ առնիցէք։

16 * Եւ նա խօսեսցի առ ՚ի քէն ընդ ժողովրդեանն. և նա եղիցի քո բերան. և դու եղիցիս նմա յԱԾակոյս կողմանէ։

17 * Եւ զգաւազանդ, որ դարձաւ յօձ, առցես ՚ի ձեռին քում, որով արասցես նշանս։

18 * Գնաց մովսէս՝ և դարձաւ առ յոթոր աներ իւր՝ և ասէ ցնա, դարձայց, և երթայց առ եղբարս իմ, որք յեգիպտոս, և տեսից, թէ տակաւին կենդանի իցեն. և ասէ յոթոր ցմովսէս, ո՛ղջ երթ։

19 * Եւ յետ աւուրց բազմաց այնոցիկ՝ վախճանեցաւ արքայն եգիպտացւոց. և ասէ Տր ցմովսէս ՚ի մադիամ. գնա՛, և երթ յեգիպտոս, զի մեռան ամենայն արք՝ որք խնդրէին զանձն քո։

20 * Եւ առեալ մովսէս զկին իւր, և զմանկունս իւր, և եհան զնոսա ՚ի գրաստս. և դարձաւ յեգիպտոս. էառ մովսէս զգաւազանն, որ յԱԾ ՚ի ձեռին իւրում։

21 * Եւ ասէ Տր ցմովսէս. յերթալդ քում, և ՚ի դառնալդ յեգիպտոս, տեսջի՛ր, զամենայն նշանս՝ զոր ետու ՚ի ձեռս քո, արասցես առաջի փարաւոնի. և ես խստացուցից զսիրտ նր. և ո՛չ արձակեսցէ զժողովուրդն։

22 * Եւ դու ասասցես ցփարաւոն. այսպէս ասէ Տր, որդի անդրանիկ իմ իսրայէլ։

23 * Ասացի ցքեզ՝ արձակեա՛ զժողովուրդ իմ. զի պաշտեսցեն զիս. ապա թէ ո՛չ կամիցիս արձակել զդա, ես եմ ապաքէն, որ սպանանիցեմ զորդի քո անդրանիկ։

24 * Եւ եղև ՚ի ճանապարհի յիջավանս, պատահեցաւ նմա հրեշտակ Տն, և խնդրէր սպանանել զնա։

25 * Եւ առեալ սեփորայի գայլախազ, թլփատեաց զանթլփատութի որդւոյն իւրոյ. և անկեալ առ ոտս նր՝ ասէ. ահա եկաց արիւն թլփատութե մանկան իմոյ։

26 * Եւ գնաց հրեշտակն ՚ի նմանէ. քանզի ասաց՝ եթէ եկաց արիւն թլփատութե մանկան իմոյ։

27 * Եւ ասէ Տէր ցահարոն, երթ ընդ առաջ մովսէսի յանապատն. և գնաց, և պատահեցաւ նմա՝ ՚ի լերինն ԱԾոյ, և համբուրեաց զնա։

28 * Եւ պատմեաց մովսէս ահարոնի զամենայն պատգամս Տն, զոր առաքեաց զնա, և զամենայն նշանսն, զոր պատուիրեաց նմա։

29 * Գնացին մովսէս և ահարոն, և ժողովեցին զամ ծերակոյտ որդւոցն իսրայէլի։

30 * Եւ խօսեցաւ ահարոն զամենայն պատգամսն՝ զոր խօսեցաւ ԱԾ ընդ մովսէսի, և արար նշանս առաջի ժողովրդեանն։

31 * Եւ հաւատաց ժողովուրդն. և ուրախ եղև. զի արար ԱԾ այց որդւոցն իսրայէլի. և զի հայեցաւ ՚ի նեղութի նոցա. խոնարհեցաւ ժողովուրդն՝ և երկիր եպագ։

Մտթ. 10.20.

Մտթ. 7. 2.

## Գլ: Ե.

1 Եւ ապա մտին մովսէս և ահարոն առաջի փարաւոնի. և ասեն ցնա՝ այսպէս ասէ Տր ԱԾ իսրայէլի. արձակեա՛ զժողովուրդ իմ. զի արասցեն

ինձ

ինձ տօն յանապատի ։ *Եւ ասէ փա- 2
րաւոն՝ ո՞վ է նա, որում լուիցյ ձայնի
նր, արձակել զորդիսն իսրայէլի ։ ո՛չ
գիտեմ զՏէրն՝ և զիսրայէլ ո՛չ արձա-
կեմ ։ *Եւ ասեն ցնա ։ Ա.Ծն եբրայեց 3
ւոց կոչեաց զմեզ առ ինքն ։ արդ եր-
թիցուք երից աւուրց ճանապարհ յա
նապատն ։ զոհեսցուք Տն Ա.Ճ մերում ։
դուցէ պատահիցի մեզ մահ կամ սպա
նումն ։ *Եւ ասէ ցնոսա արքայն եգիպ 4
տացւոց ։ ընդէ՞ր դու մովսէս և ահարօն
խափանէք զժողովուրդն 'ի գործոց
իւրեանց ։ երթա՛յք յիւրաքանչիւր
գործ իւր ։ *Եւ ասէ փարաւոն ։ ահա 5
բազմանայ յոյժ ժողովուրդն յերկրի ։
արդ մի՛ հանդարտեցուսցուք զնոսա 'ի
գործոց ։ *Եւ հրամայեաց փարա- 6
ւոն յաւուր յայնմիկ գործավարաց
ժողովրդեանն ։ և դպրացն ։ ասէ ։
*Մի՛ ևս յաւելուցուք տալ յարդ ժո- 7
ղովրդեանն յաղիւսարկութի, որպէս
յերէկն և յեռանդ ։ ինքեանք երթի-
ցեն՝ և ժողովեսցեն իւրեանց յարդ ։
*Եւ զսակ զաղիւսարկին որպէս գոր 8
ծէին հանապազ՝ արկէք 'ի վերայ նց ։
մի՛ հատանիցէք ինչ անտի ։ զի դա-
տարկացան ։ և վասն այնորիկ աղաղա
կեն՝ և ասեն ։ երթիցուք՝ և զոհեսցուք
Ա.Ճ մերում ։ *Ծանրասցի գործ 9
մարդկան՝ և այնմ հոգասցին ։ և մի՛
հոգասցին 'ի բանս տարապարտս ։
*Եւ տագնապէին զնոսա գործավարք 10
ժողովրդեանն՝ և դպիրք նորա ։ և խօ
սէին ընդ ժողովրդեանն, և ասէին ։
այսպէս ասէ փարաւոն, ո՛չ ևս տաց 11
ձեզ յարդ ։ *Դուք ձեզէն երթա՛յք
ժողովեցէ՛ք ձեզ յարդ՝ ուստի և գտա
նիցէք ։ զի ո՛չ թուլասցի ձեզ 'ի սակէն 12
ձերմէ՝ և ոչ ինչ ։ *Եւ սփռեցաւ
ժողովուրդն ընդ ամենայն երկիրն
եգիպտացւոց, ժողովել զեղէգն առ 13
'ի յարդ ։ *Եւ գործավարքն ստի-
պէին զնոսա, և ասէին ։ բովանդա-
կեցէ՛ք զգործն ձեր, ըստ հանապա-
զորդ սակին ։ որպ̃ մինչ յարդն տային 14
ձեզ ։ *Եւ տանջեցան դպիրք ազգի
որդւոցն իսրայէլի, որք կային 'ի վե
րայ նց, 'ի վերակացուացն փարա-
ւոնի ։ զի ասէին, եթէ ընդէ՞ր ոչ
բովանդակեցէք զսակ աղիւսոյն ձե
րոց, որպ̃ յերէկն և յեռանդ՝ և զայսր 15
աւուրդ ։ *Եւ մտեալ դպրաց որ-
դւոցն իսրայէլի՝ բողոք կալան առա
ջի փարաւոնի, և ասեն ։ ընդէ՞ր առ- 16
նես այսպէս ընդ ծառայս քո ։ *Յարդ
ո՛չ տան ծառայից քոց ։ և զաղիւսն
հրամայեն մեզ գործել ։ և ահա ծա-
ռայք քո 'ի տանջանս են ։ բռնան առ-

17 նես ժողովրդեանն քում ։ *Եւ ասէ
ցնս ։ դատարկ էք ։ պարապորդ էք ։
վն այնորիկ ասէք՝ երթիցուք, և զոհես
18 ցուք Ա.Ճ մերում ։ *Արդ՝ երթա՛յք՝
գործեցէ՛ք ։ քանզի յարդ ոչոք տայ
ձեզ ։ և զսակ աղիւսոյն բովանդակ
19 տայցէք ։ *Տեսանէին դպիրք որդւոցն
իսրայէլի զանձինս իւրեանց 'ի չար-
չարանս՝ և ասէին ։ ոչոք թողու մեզ
զսակ հանապազորդ աղիւսաթուխին ։
20 *Պատահեցան մովսէսի և ահարօնի ։
զի գային հանդէպ նոցա ելեալք յե-
21 րեսաց փարաւոնի ։ *Եւ ասեն ցնոսա ։
տեսցէ Ա.Ծ, և դատեսցէ զձեզ ։ զի գար
շեցուցիք զհոտ մեր առաջի փարաւո-
նի, և առաջի ծառայից նորա ։ տալ
սուր 'ի ձեռս նորա կոտորել զմեզ ։
22 *Դարձաւ մովսէս առ Տր՝ և ասէ ։ Տր,
ընդէ՞ր չարչարեցեր զժողովուրդն ։ և
23 ընդէ՞ր առաքեցեր զիս ։ *Եւ յորմէ
հետէ մտի առ փարաւոն խօսել յա-
նուն քո՝ չարչարեաց զժողովուրդն ։ և
փրկելով ո՛չ փրկեցեր զժողովուրդ քո

## ԳԼ ։ Զ ։

1 Եւ ասէ Տր ցմովսէս ։ այժմ տես-
ցես, զինչ արարից ընդ փարաւոնի ։
զի հզօր ձեռամբ արձակեսցէ զդոսա ։
և բարձրացեալ բազկաւ հանցէ զդո-
2 սա յերկրէ իւրմէ ։ *Խօսեցաւ Ա.Ծ
ընդ մովսէսի, և ասէ ցնա ։ ես եմ Տր ։
3 *Եւ երևեցայ աբրահամու իսահա-
կայ և յակոբայ ։ Ա.Ծ նոցա եմ ։ և ա-
նուն իմ Տրէ ։ և ոչ յայտնեցի նոցա ։
4 *Եւ հաստատեցի զուխտ իմ առ նո-
սա ։ տալ նոցա զերկիրն քանանացւոց
5 ուր պանդխտեցանն ։ *Եւ ես լուայ
հեծութե որդւոց իսրայէլի ։ զոր ե-
գիպտացիքդ ծառայեցուցանեն ։ և
6 յիշեցի զուխտն ձեր ։ *Արդ՝ խօսեա՛ց
ընդ որդիսն իսրայէլի, և ասասցես ։
ես եմ Տր ։ և հանից զձեզ 'ի բռնաւո
րութե եգիպտացւոցդ ։ և փրկեցից
զձեզ 'ի ծառայութե դոցա ։ և ապրե
ցուցից զձեզ բարձր բազկաւ և մեծա
7 մեծ դատաստանօք ։ *Եւ առից զձեզ
ինձ 'ի ժողովուրդ ։ և եղէց ձեր Ա.Ծ ։
և ծանիջիք թէ ես եմ Տր Ա.Ծ ձեր՝
որ հանեմ զձեզ 'ի բռնութե եգիպ-
8 տացւոց ։ *Եւ տարայց զձեզ յեր-
կիրն՝ յոր ձգեցի զձեռն իմ ։ տալ զնա
աբրահամու իսահակայ և յակոբայ ։
և տաց զնա ձեզ վիճակաւ ։ զի ես եմ
9 Տր ։ *Խօսեցաւ մովսէս այսպէս ընդ
որդիսն իսրայէլի ։ և ո՛չ անսացին նմա,
'ի կարճմտութե, և 'ի խիստ գործոյն ։
10 *Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ ։
11 *Մո՛ւտ խօսեաց ընդ փարաւոնի ար-
քային

քայլին եգիպտացւոց․ զի արձակեսցէ զորդիսն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց ։ 12 * Խօսեցաւ մովսէս առաջի Տն եւ ասէ ․ ահա որդիքն իսրայէլի ոչ լուան ինձ ․ եւ զիա՞րդ լուիցէ ինձ փարաւոն․ եւ ես չեմ խօսօղ ոք ։ 13 * Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի եւ ընդ ահարոնի․ եւ ետ նոցա հրաման առ որդիսն իսրայէլի․ եւ առ փարաւոն արքայ եգիպտացւոց․ հանել զորդիսն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց ։ 14 * Եւ այս են նախապետք տանց ազգաց նոցա․ որդիք ռուբենի անդրանկան իսրայէլի․ ենոք․ եւ փաղղուս․ ասրոն․ եւ քարմի ։ 15 * Այս ցեղ ռուբենի է․ եւ որդիք շմաւոնի․ յամուել․ եւ յամին․ եւ աւհովդ․ եւ յաքին․ եւ սահառ․ եւ սաւուղ որ 'ի փիւնիկեցւոյ անտի էր ։ այս ցեղք են որդւոցն շմաւոնի ։ 16 * Եւ այս անուանք են որդւոցն ղեւեայ․ ըստ ազգս իւրեանց․ գեդսոն․ կահաթ․ եւ մերարի ։ եւ ամք կենաց ղեւեայ հարիւր եւ երեսուն եւ եօթն ամ ։ 17 * Եւ այս են որդիք գեդսոնի ․ ղոբենի ․ եւ սեմէի ․ տունք նահապետաց նոցա ։ 18 * Եւ որդիք կահաթու ․ ամրամ․ եւ իսահառ․ եւ քեբրոն․ եւ ոզիէլ ․ եւ ամք կենաց կահաթու, հարիւր եւ երեսուն եւ երեք ամք ։ 19 * Եւ որդիք մերարեայ ․ մողլի ․ եւ մուսի ․ այս են տունք նահապետաց ղեւեայ ․ ըստ ազգաց իւրեանց ։ 20 * Եւ էառ ամրամ զյոքաբեդ զդուստր եղբօր հօր իւրոյ իւր կնութե ։ եւ ծնաւ նմա զահարոն․ եւ զմովսէս․ եւ զմարիամ քոյր նոցա․ եւ ամք կենաց ամրամայ․ հարիւր եւ երեսուն եւ եօթն ամ ։ 21 * Եւ որդիք սահառայ․ կորխ․ եւ նաբեգ ․ եւ զեքրի ։ 22 * Եւ որդիք ոզիէլայ ․ միսայէլ․ եւ եղիսափան․ եւ սեթրի ։ 23 * Եւ էառ ահարոն զեղիսաբեթ զդուստր ամինադաբայ․ զքոյր նաասոնի իւր կնութե ․ եւ ծնաւ նմա զնաբաթ եւ զաբիուդ ․ եւ զեղեազար ․ եւ զիթամար ։ 24 * Եւ որդիք կորխայ․ ասիր ․ եւ եղկանայ․ եւ աբիասափ․ սոքա են ազգք կորխայ ։ 25 * Եւ եղեազար ահարոնեան էառ 'ի դստերաց անտի փուտիէլի իւր կնութե ․ եւ ծնաւ նմա զփենեհէս ։ այս են իշխանք նախապետաց ղեւտացւոցն ըստ ազգս իւրեանց ։ 26 * Եւ այս ահարոն եւ մովսէս, յորս ասաց Ած հանել զորդիսն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց ․ համդերձ զօրութբն իւրեանց ։ 27 * Եւ սոքա են որք վիճէին ընդ փարաւոնի արքային եգիպտացւոց, հանել զորդիսն իսրայէլի յեգիպտոսէ ։ այսէ մովսէս եւ ահարոն ։ 28 * Յաւուր յորում խօսեցաւ Տր ընդ

Ծննդ. 46.8. Թուոց. 26.5. Ա. Մնաց. 5.1. Ա. Մնաց. 4.24. Ա. Մնաց. 6. 1. եւ 23.6. Թուոց. 3.19. եւ 26. 57. եւ 58. Ա. Մնաց. 6. 2. եւ 23.12.

29 մովսէսի յերկրին եգիպտացւոց ։ * Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ եւ ասէ ։ ես եմ Տր ։ խօսեա՛ց ընդ փարաւոնի արքային եգիպտացւոց զա՛մ ինչ՝ զոր ասեմ քեզ ։ 30 * Եւ ասէ մովսէս առաջի Տն ։ ահաւասիկ ես նրբաձայն եմ․ եւ զիա՞րդ լուիցէ ինձ փարաւոն ։

## ԳԼ ։ Է ։

1 Եւ ասէ Տր ցմովսէս ․ ահա ետու զքեզ Ած փարաւոնի ։ եւ ահարոն եղբայր քո եղիցի քեզ մարգարէ ։ 2 * Դու խօսեսցիս ընդ նմա զա՛մ ինչ՝ զոր պատուիրեմ քեզ ։ եւ ահարոն եղբայր քո խօսեսցի ընդ փարաւոնի ․ արձակել զորդիսն իսրայէլի յերկրէ իւրմէ ։ 3 * Եւ ես խստացուցից զսիրտն փարաւոնի․ եւ յաճախեցից զնշանս իմ եւ զարուեստս յերկրին եգիպտացւոց ։ 4 * Եւ ո՛չ լուիցէ ձեզ փարաւոն ։ եւ արկից զձեռն իմ յեգիպտոս ․ եւ հանից համդերձ զօրութբ իմով զժողովուրդ իմ, զորդիսն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց ․ մեծաւ վրէժխնդրութբ ։ 5 * Եւ ծանիցեն եգիպտացիքն, թէ ես եմ Տր ․ եւ ձգեցից զձեռն իմ յեգիպտոս ․ եւ հանից զորդիսն իսրայէլի 'ի միջոյ նոցա ։ 6 * Եւ արարին մովսէս եւ ահարոն․ որպէս եւ պատուիրեաց նց Տր, նոյնպէս եւ արարին ։ 7 * Եւ մովսէս էր ամաց ութսնից ․ եւ ահարոն էր որդի ամաց ութսուն եւ երից ․ յորժամ խօսեցան ընդ փարաւոնի ։ 8 * Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի եւ ընդ ահարոնի՝ եւ ասէ ։ 9 * Եթէ խօսեսցի ընդ ձեզ փարաւոն՝ եւ ասասցէ․ տուք մեզ նշան կամ արուեստ 'ի Տնէ, ասասցես ցահարոն ցեղբայր քո․ առ դու զգաւազանդ , եւ ընկեա՛ զդա 'ի գետին առաջի փարաւոնի , եւ ծառայից նր ․ եւ եղիցի վիշապ ։ 10 * Մտին մովսէս եւ ահարոն առաջի փարաւոնի՝ եւ արարին այնպէս, որպէս պատուիրեաց նց Տր ։ եւ ընկէց ահարոն զգաւազանն առաջի փարաւոնի , եւ առաջի ծառայից նր ․ եւ եղեւ վիշապ ։ 11 * Եւ կոչեաց փարաւոն զիմաստունս եգիպտացւոց եւ զկախարդս ․ եւ արարին դեղքն եգիպտացւոց կախարդութբ իւրեանց նոյնպէս ։ 12 * Եւ ընկէց իւրաքանչիւրոք զգաւազան իւր՝ եւ եղեն վիշապք ։ եւ եկուլ գաւազանն ահարոնի զգաւազանս նց ։ 13 * Եւ կարծրացաւ սիրտն փարաւոնի ․ եւ ոչ լուաւ նց , որպէս խօսեցաւ Տր ։ 14 * Եւ ասէ Տր ցմովսէս ․ ծանրացեալ է սիրտն փարաւոնի չարձակել զժողովուրդն ։ 15 * Երթ առ փարաւոն ընդ առաւօտն․

ահա

Ել. 4.15. Բ. Տիմ. 3.8.

ահա նա ելանէ 'ի ջուրն . և կացցես հանդէպ նորա առ եզեր գետոյն . և զգաւազանն՝ որ դարձաւ յօձ՝ առցես



'ի ձեռին քում։ 16 * Եւ ասասցես ցնա . Տր Ած եբրայեցւոց առաքեաց զիս առ քեզ՝ և ասէ . արձակեա զժողովուրդ իմ, զի պաշտեսցեն զիս յանապատի . և ահա ոչ լուար ինձ մինչև ցայժմ։ 17 * Արդ այսպէս ասէ Տր . այդու գիտասցես՝ թէ ես եմ Տր . ահաւասիկ ես հարկանեմ՝ գաւազանաւս, որ 'ի ձեռին իմում է՝ զջուրս գետոյդ, և դարձցի յարիւն։ 18 * Եւ ձկունք, որք 'ի գետ այդր են՝ սատակեսցին, և նեխեսցի գետդ . և ոչ կարասցեն եգիպտացիք ըմպել ջուր 'ի գետոյ այտի։ 19 * Եւ ասէ Տր ցմովսէս . ասա ցահարոն . առ զգաւազանդ . և ձգեա զձեռն քո 'ի վր ջրոցդ եգիպտոսի . և 'ի վր գետոց նց . և 'ի վր լճաց նց . և 'ի վր խաղից նց . և 'ի վր ջրակուտաց նոցա . և եղիցի արիւն։ և եղև արիւն յամ երկրին եգիպտացւոց 'ի փայտս և 'ի քարինս։ 20 * Եւ արարին այնպէս մովսէս և ահարոն՝ որպէս և պատուիրեաց նոցա Տէր . ‖ և վերացուցեալ զգաւազանն իւր՝ եհար զջուր գետոյն . առաջի փարաւոնի, և առաջի ծառայից նր։ և դարձոյց զամ յարիւն։ 21 * Եւ ձկունք որք 'ի գետ անդ էին, սատակեցան . և նեխեցաւ գետն։ և ոչ կարէին եգիպտացիքն ըմպել զջուր 'ի գետոյ անտի։ և էր արիւն յամենայն երկրին եգիպտացւոց։ 22 * ‖ Եւ արարին ‖ նոյնպէս և գէտքն եգիպտացւոց կախարդութեամբքն իւրեանց . և խստացաւ սիրտն փարաւոնի՝ և ոչ լուաւ նոցա՝ որպէս և ասաց Տր։ 23 * Դարձաւ փարաւոն՝ եմուտ 'ի տուն իւր . և ոչ հաստատեաց զմիտս իւր, և ոչ այնու ևս։ 24 * Եւ փորեցին ամենայն եգիպտացիքն շուրջ զգետովն ջուր ըմպելոյ . և ոչ կարէին ըմպել ջուր 'ի գետոյ անտի։ 25 * Եւ լցան աւուրք եօթն յետ հարկանելոյ Տն զգետն։

‖ Ելից 17. 5. Սաղմ. 77. 44.

‖ Իմաստ. 17. 7.

## ԳԼ։ Ը։

1 Եւ ասէ Տէր ցմովսէս՝ մուտ առ փարաւոն՝ և ասասցես ցնա։ այսպէս ասէ Տր . արձակեա զժողովուրդ իմ, զի պաշտեսցեն զիս։ 2 * Ապա թէ ոչ կամիս դու արձակել . ահա ես հարից զամ սահմանս քո գորտովք։ 3 * Եւ բղխեսցէ գետդ գորտս . և ելեալ մտանիցեն 'ի տունս քո . և 'ի շտեմարանս սենեկաց քոց . և 'ի գահոյս քո . և 'ի տունս ծառայից քոց, և ժողովրդեան քոյ . և 'ի թոնիրս քո . և 'ի զանգուածս քո։ 4 * Եւ 'ի վր քո և 'ի վր ժողովրդեան քոյ . և 'ի վերայ ծառայից քոց ելանիցեն գորտք։ 5 * Եւ ասէ Տր ցմովսէս։ ասա ցահարոն եղբայր քո։ ձգեա ձեռամբ քով զգաւազանդ քո 'ի վերայ գետոցն . և 'ի վերայ ջրադարձից . և 'ի վերայ խաղից։ և հանցես գորտ 'ի վերայ երկրիդ եգիպտացւոց։ 6 * Եւ ձգեաց ահարոն զձեռն իւր 'ի վերայ ջրոցն եգիպտացւոց . և էհան գորտ։ և ել գորտն և ծածկեաց զերկիրն եգիպտացւոց։ 7 * ‖ Արարին նոյնպէս և ‖ գէտքն եգիպտացւոց կախարդութեքն իւրեանց . և հանին գորտ յերկիրն եգիպտացւոց։ 8 * Կոչեաց փարաւոն զմովսէս և զահարոն՝ և ասէ։ աղօթս արարէք առ Տր . և 'ի բաց արասցէ զգորտս յինէն՝ և 'ի ժողովրդենէ իմմէ։ և արձակեցից զժողովուրդդ . և զոհեսցեն Տն։ 9 * Եւ ասէ մովսէս ցփարաւոն՝ ժամ դիր ինձ . առ երբ արարից աղօթս վասն քո, և ծառայից քոց՝ և ժողովրդեան քոյ . սատակել զգորտդ 'ի քէն և 'ի ժողովրդենէ քումմէ . և 'ի տանց ձերոց . բայց միայն 'ի գետ անդ մնասցեն։ 10 * Եւ նա ասէ . առ վաղիւ։ և սա ասէ, որպ ասացերդ եղիցի . զի գիտասցես եթէ չիք այլ ոք, բաց 'ի Տէ Այ մերմէ։ 11 * Եւ բարձցին գորտք 'ի քէն և 'ի տանց քոց . և 'ի ծառայից քոց և 'ի ժողովրդենէ քումմէ . բայց միայն 'ի գետ անդ մնասցեն։

‖ Իմաստ. 17. 7.

ցեն ։ 12 * Եւ ելին մովսէս եւ ահարոն 'ի փարաւոնէ ։ եւ աղաղակեաց մովսէս առ Տր՝ վասն ժամադրութեան գորտոյն, որպէս ժամադիր եղեւ փարաւոնի ։ 13 * Եւ արար Տր՝ որպէս եւ ասացն մովսէս ։ եւ սատակեցաւ գորտն 'ի տանց եւ 'ի սրահից եւ յանդոց ։ 14 * Եւ ժողովեցին զնոսա կոյտս կոյտս ։ եւ նեխեցաւ երկիրն ։ 15 * Իբրեւ ետես փարաւոն եթէ եղեւ դիւրութիւն, ծանրացաւ սիրտ նորա ։ եւ ոչ լուաւ նոցա՝ որպէս եւ խօսեցաւ Տր ։ 16 * Եւ ասէ Տր ցմովսէս ։ ասա՛ ցահարոն ։ թէ ձգեա՛ ձեռամբ քով զգաւազանդ ։ եւ հա՛ր զհող երկրիդ՝ եւ եղիցի մուն ։ 'ի մարդ եւ յանասուն ։ եւ յամ հող երկրի եգիպտացւոց ։ 17 * Եւ արարին այնպէս՝ եւ ձգեաց ահարոն ձեռամբ իւրով զգաւազանն ։ եւ եհար զհող երկրին ։ եւ եղեւ մուն 'ի մարդ եւ յանասուն ։ եւ յամ հող երկրին եգիպտացւոց ։ 18 * Արարին նոյնպէս եւ դէտքն կախարդութեամբ իւրեանց հանել մուն, եւ ոչ կարացին ։ եւ եղեւ մունն 'ի մարդ եւ յանասուն ։ 19 * Եւ ասեն դէտքն ցփարաւոն ։ մատն Այ է այդ՝ ։ եւ խստացաւ սիրտ փարաւոնի ։ եւ ոչ լուաւ նց որպէս եւ խօսեցաւ Տէր ։ 20 * Եւ ասէ Տր ցմովսէս ։ կանխեա՛ ընդ առաւօտն՝ եւ կա՛ց առաջի փարաւոնի ։ եւ ահա նա ելանէ 'ի ջուր անդր ։ եւ ասասցես ցնա ։ այսպէս ասէ Տր ։ արձակեա՛ զժողովուրդ իմ ; զի պաշտեսցեն զիս ։ 21 * Ապա թէ ոչ կամիս արձակել զժողովուրդ իմ, ահա ես առաքեմ 'ի վր քո՝ եւ 'ի վերայ ծառայից քոց ։ եւ 'ի վր ժողովրդեան քոյ ։ եւ 'ի վերայ տանց ձերոց շանաճանճ ։ եւ լցցին տունք եգիպտացւոց շանաճանճիւ ։ եւ երկիրն յորում իցեն 'ի նմա ։ 22 * Եւ սքանչելի արարից յաւուրն յայնմիկ զերկիրն գեսեմ ։ յորում ժողովուրդ իմ իցէ ։ եւ մի՛ լիցի անդ շանաճանճ, զի գիտասցես թէ ես եմ Տր ։ Տր ամ երկրի ։ 23 * Եւ տաց խտիր 'ի մէջ ժողովրդեան իմոյ՝ եւ 'ի մէջ ժողովրդեան քոյ ։ եւ վաղիւ եղիցի նշանդ այդ 'ի վր երկրիդ ։ 24 * Եւ արար Տր այնպէս ։ || եւ եկն շանաճանճ բազում 'ի տունս փարաւոնի ։ եւ 'ի տունս ծառայից նորա ։ եւ յամ երկիրն եգիպտացւոց ։ եւ սատակեցաւ երկիրն 'ի շանաճանճէ անտի ։ 25 * Եւ կոչեաց փարաւոն զմովսէս եւ զահարոն, եւ ասէ ։ երթայք՝ զոհեցէք Տն Այ ձերում աստէն 'ի սմին երկրի ։ 26 * Եւ ասէ մովսէս ։ չէ՛ մարթ այդմ լինել ։ եթէ զգարշելիս եգիպտացւոց զոհիցեմք Տն Այ մերում ։ քանզի եթէ զոհիցեմք զգարշելիս եգիպտացւոց առաջի նոցա, քարկոծեն զմեզ ։ 27 * Այլ երթիցուք երեքօրեայ ճանապարհ յանապատ ։ եւ զոհեսցուք Տն Այ մերում, || որպէս եւ ասաց մեզ Տր ։ 28 * Եւ ասէ փարաւոն ։ ես արձակեմ զձեզ՝ եւ զոհեսջիք Տն Այ ձերում յանապատի ։ այլ մի՛ ուրեք հեռի ձգիցիք երթալ, եւ արդ աղօթս արարէք վասն իմ առ Տր ։ 29 * Եւ ասէ մովսէս ։ ես ելից 'ի քէն ։ եւ աղօթս արարից առ Այ ։ եւ փարատեսցէ զշանաճանճդ 'ի փարաւոնէ ։ եւ 'ի ծառայից իւրոց ։ եւ 'ի ժողովրդենէ իւրմէ՝ վաղիւ ։ բայց մի՛ եւս խաբեսցէ փարաւոն առ 'ի չարձակել զժողովուրդդ՝ զոհել Տն ։ 30 * Ել մովսէս 'ի փարաւոնէ ։ 31 եւ եկաց յաղօթս առ Այ ։ * Եւ արար Տր՝ որպէս եւ ասացն մովսէս ։ եւ փարատեաց զշանաճանճն 'ի փարաւոնէ ։ եւ 'ի ծառայից նորա ։ եւ 'ի ժողովրդենէ նորա ։ եւ ոչ մնաց եւ ոչ մի ։ 32 * Եւ ծանրացոյց փարաւոն զսիրտ իւր եւ 'ի ժամանակի յայնմիկ ։ եւ ոչ կամեցաւ արձակել զժողովուրդն Տն ։

|| Իմա. 16.9.

|| Ելք. 3.18.

## ԳԼ ։ Թ ։

1 Եւ ասէ Տր ցմովսէս ։ մո՛ւտ առ փարաւոն եւ ասասցես ցնա ։ այսպէս ասէ Տր Այ եբրայեցւոց ։ արձակեա՛ զժողովուրդ իմ, զի պաշտեսցեն զիս ։ ապա թէ ոչ կամիս արձակել զժողովուրդ իմ ։ 2 * Այլ տակաւին ունիցիս զդա ։ 3 * Ահա ձեռն Տն եղիցի 'ի խաշինս քո ։ որք 'ի դաշտի են ։ եւ 'ի ձիս եւ 'ի էշս եւ յուղտս ։ եւ յարջառ եւ յոչխար՝ մահու մեծաւ յոյժ ։ 4 * Եւ արարից ես սքանչելիս 'ի մէջ խաշանցն եգիպտացւոց ։ եւ 'ի մէջ խաշանցն իսրայէլի ։ եւ ոչ ծախեսցի յամենայն որդւոցն իսրայէլի կւ ինչ ։ 5 * Եւ ժամանակեաց Այ, եւ ասէ ։ վաղիւ արասցէ Տր զբանդ զայդ 'ի վերայ երկրիդ ։ 6 * Եւ արար Տր զբանն զայն 'ի վաղիւ անդր ։ եւ սատակեցաւ ամենայն անասուն եգիպտացւոց, բայց յանասնոց որդւոցն իսրայէլի ոչ ծախեցաւ՝ եւ ոչ ինչ ։ 7 * Իբրեւ ետես փարաւոն, եթէ ոչ ծախեցաւ յանասնոց որդւոցն իսրայէլի եւ ոչ ինչ ։ ծանրացաւ սիրտ նորա ։ եւ ոչ արձակեաց զժողովուրդն ։ 8 * Խօսեցաւ Տր ընդ մովսէսի եւ ընդ ահարոնի՝ եւ ասէ, առէք դուք լի ձեռօք ձերօք զմոխիր հնոցի ։ եւ ցանեսցէ զայն մովսէս ընդ երկինս առաջի փարաւոնի՝ եւ առաջի ծառայից նր ։ 9 * Եւ եղիցի փոշի ընդ ամենայն երկիրդ եգիպտացւոց ։ եւ եղիցի 'ի մարդ եւ յանասուն կեղ ։ եւ եռասցեն խաղաճարտք 'ի մարդ եւ յա-

նատուն յա̄մ երկրին եգիպտացւոց ։ [10] * Եւ առին զմոխիր հնոցին առաջի փարաւոնի ։ և ցանեաց զայն մովսէս ընդ երկինս ։ և եղև կեղ՝ և խաղաղարտք եռացեալք ՚ի մարդ և յանասուն ։ [11] * Եւ ոչ կարէին կախարդքն կալ առաջի մովսէսի, վասն կեղոյն․ քանզի եղև կեղն և ՚ի կախարդսն, և յամենայն երկիրն եգիպտացւոց ։ [12] * Եւ խստացոյց Տր̄ զսիրտն փարաւոնի․ և ոչ լուաւ նոցա՝ որպէս և ասաց Տր̄ ցմովսէս ։ [13] * Եւ ասէ Տր̄ ցմովսէս ։ կանխեա ընդ առաւօտն, և կաց առաջի փարաւոնի, և ասասցես ցնա․ այսպէս ասէ Տր̄ Ածն̄ եբրայեցւոց ։ արձակեա զժողովուրդ իմ, զի պաշտեսցեն զիս ։ [14] * Քանզի յայսմ ժամանակի առաքեցից ես զամենայն պատահարս ՚ի սիրտ քո՝ և ծառայից քոց՝ և ժողովրդեան քոյ․ զի գիտասցես, եթէ չիք որ իբրև զիս յամենայն երկրի ։ [15] * Քանզի ձգեալ զձեռն իմ հարից զքեզ՝ և զժողովուրդ քո մահուամբ․ և սատակեսցիս յերկրէ ։ [16] *‖ Եւ վասն այնորիկ պահեցար, զի ՚ի քեզ ցուցից զզօրութիւն իմ․ և զի պատմեսցի անուն իմ ընդ ամենայն երկիր ։ [17] * Եւ դու տակաւին թևարկես զժողովրդեամբ իմով չարչարել զդոսա ։ [18] * Եւ ես ահա տեղացից վաղիւ յայսմ ժամու կարկուտ սաստիկ յոյժ․ որպիսի ոչ եղև յեգիպտոս յօրէ յորմէ հաստատեցաւ մինչև ցայսօր ։ [19] * Եւ արդ փութա ժողովել զանասուն քո․ և որ ինչ իցէ քո ՚ի դաշտի ։ զի ամենայն մարդ և անասուն՝ որ գտցի ՚ի դաշտի՝ և ոչ մտցէ ՚ի տուն, անկցի ՚ի վր̄ նց̄ կարկուտն, և սատակեսցէ ։ [20] * Որ միանգամ երկեաւ ՚ի բանէ Տն̄ ՚ի ծառայիցն փարաւոնի, ժողովեաց զծառայս իւր և զանասուն ՚ի տուն ։ [21] * Եւ որ ոչ անսաց ՚ի միտս իւր բանից Տն̄, եթող զծառայս իւր՝ և զանասուն իւր ՚ի դաշտի ։ [22] * Եւ ասէ Տէր ցմովսէս՝ ձգեա զձեռն քո յերկինս․ և եղիցի կարկուտ ՚ի վր̄ երկրին եգիպտացւոց․ ՚ի վերայ մարդկան, և անասնոյ․ և ՚ի վր̄ ա̄մ բանջարոյ՝ որ է ՚ի դաշտի երկրին եգիպտացւոց ։ [23] *‖ Եւ ձգեաց մովսէս զձեռն իւր յերկինս․ և ետ Տր̄ բարբառս և կարկուտ՝ և ընթանայր հուր ընդ երկիրն ։ և տեղաց Տէր կարկուտ ՚ի վերայ ա̄մ երկրին եգիպտացւոց ։ [24] * Էր կարկուտ՝ և հուր բորբոքեալ ՚ի մէջ կարկտին ։ և կարկուտն սաստիկ էր յոյժ․ որպիսի ոչ եղև յամենայն երկրին եգիպտացւոց․ յորմէհետէ եղեալ էր ՚ի վերայ նր̄ ազգ ։ [25] * Եհար կարկուտն յամենայն երկրին եգիպտացւոց զա̄մ՝ որ ինչ էր ՚ի դաշտի՝ ՚ի մարդոյ մինչև յանասուն․ և զա̄մ բանջար որ ՚ի դաշտի էր՝ եհար կարկուտն․ և զա̄մ փայտ որ ՚ի դաշտս, մանրեաց ։ [26] * Բայց յերկրին գեսեմ, ուր էին որդիքն իսրայէլի՝ ոչ եղև կարկուտ ։ [27] * Եւ առաքեալ փարաւոնի կոչեաց զմովսէս և զահարոն՝ ասէ ցն̄․ մեղայ․ այսուհետև Տր̄ արդար է․ և ես, և ժողովուրդ իմ ամպարիշտ ։ [28] * Կացէք յաղօթս վս̄ իմ առ Տր̄՝ և դադարեսցին ՚ի լինելոյ ձայնքն Այ̄․ և կարկուտն և հուր․ և արձակեցից զձեզ՝ և ոչ ևս յաւելցիք մն̄ալ ։ [29] * Եւ ասէ ցնա մովսէս․ այժմ իբրև ելից զ̄ քաղաքս, ձգեցից զձեռս իմ առ Ած̄՝ և ձայնքն դադարեսցեն․ և կարկուտն, և անձրև ոչ ևս լիցի․ զի ծանիցես թէ Տն̄ է երկիր ։ [30] * Եւ դու և ծառայք քո՝ գիտեմ թէ չև ևս երկեայք ՚ի Տէ̄ Այ̄ ։ [31] * Կտաւն և գարին հարաւ ։ զի գարին յոհ̄ կայր․ և կտաւն սերմանացեալ էր ։ [32] * Եւ ցորեանն և հաճար ոչ հարան՝ զի անսագուն էին ։ [33] * Եւ ել մովսէս ՚ի փարաւոնէ արտաքս քան զքաղաքն, և ձգեաց զձեռն իւր առ Տր̄․ և դադարեցին ձայնքն և կարկուտն․ և անձրև ոչ ևս կաթեցաւ յերկիր ։ [34] * Իբրև ետես փարաւոն եթէ դադարեաց անձրևն, և կարկուտ, և ձայնքն․ յաւել ՚ի մեղանչել․ և ծանրացոյց զսիրտ իւր․ [35] և զծառայից իւրոց ։ * Եւ խստացաւ սիրտն փարաւոնի՝ և ոչ արձակեաց զորդիսն իսրայէլի՝ որպէս խօսեցաւ Տր̄ ՚ի ձեռն մովսէսի ։

‖ Հռոմ. 9.17.

‖ Իմաս. 16. 16. և 19.19

## Գլ․ Ժ․

[1] Խօսեցաւ Տր̄ ընդ մովսէսի՝ և ասէ․ մուտ առ փարաւոն՝ զի ես խստացուցի զսիրտ նր̄․ և զսիրտ ծառայից նր̄ ։ զի կարգաւ եկեսցեն նշանքս իմ ՚ի վերայ նց̄ ։ [2] * Որպէս զի պատմիցէք յականջս որդւոց ձերոց․ և որդւոց որդւոց ձերոց․ որչափ խաղացի ընդ եգիպտացիսդ ։ և զնշանս իմ զոր արարի ՚ի նոսա․ և ծանիջիք՝ եթէ ես եմ Տր̄ ։ [3] * Մտին մովսէս և ահարոն առաջի փարաւոնի, և ասեն ցնա ։ այսպէս ասէ Տր̄ Ածն̄ եբրայեցւոց․ մինչև յե՞րբ ոչ կամիցիս ամաչել յինէն ։ արձակեա զժողովուրդ իմ․ զի պաշտեսցեն զիս ։ [4] *‖ Ապա թէ ոչ կամիցիս դու արձակել զժողովուրդ իմ, ահաւասիկ ես ածից ՚ի սոյն ժամու վաղիւ մարախ

‖ Իմաս. 16. 9.

մարախ սաստիկ 'ի վերայ ա՟մ սահմա
նաց քոց ։ * Եւ ծածկեսցէ զամենայն 5
երեսս երկրի ․ և ոչ կարիցես տեսանել
զերկիրն․ և կերիցէ զա՟մ զնշխարն, զոր
եթող ձեզ կարկուտն ։ և կերիցէ զա՟մ
փայտ բուսեալ ձեզ 'ի վ՟ր երկրի ։* Եւ 6
լցցին տունք քո , և տունք ծառայից
քոց՝ և ա՟մ տունք յա՟մ երկրին եգիպտա
ցւոց․ զոր ոչ երբէք տեսին հարք ձեր․
և ոչ հաւք նո՟ց․ յորմէ օրէ եղեն յերկրի
մինչև ցայսօր ։ և խոյս տուեալ ել 'ի
փարաւոնէ ։ * Ասեն ցնա ծառայքն 7
փարաւոնի՝ մինչև երբ իցէ մեզ խոչ
այդ․ արձակեա զմարդիկն՝ զի պաշ
տեսցեն զՏ՟ր Ա՟ծ իւրեանց։ եթէ գի
տել կամիցիս՝ զի կորեաւ եգիպտոս ։
* Եւ դարձուցին զմովսէս և զահարոն 8
առ փարաւոն՝ և ասէ ցն՟ս ․ երթայք,
պաշտեցէք զՏ՟ր Ա՟ծ ձեր․ բայց ո՛վ և
ո՛վ իցեն, որք երթայցեն ։ * Եւ ասէ 9
մովսէս ․ երիտասարդովք հանդերձ՝ և
ծերովք մերովք երթիցուք ․ ուստերօք
և դստերօք մերովք ․ արջառով և ոչ
խարով մերով երթիցուք ․ զի տօն է
Տ՟ն Ա՟յ մերոյ։ * Եւ ասէ ցնոսա ․ եղի 10
ցի այդպէս ․ Տ՟ր ընդ ձեզ ․ քանզի ար
ձակեմ զձեզ ․ միթէ և զստացուածս
ձեր ։ տեսանէք, զի չարիք կան 'ի ձեզ ։
* Մի՛ այդպէս՝ այլ երթիցեն արք և 11
եթ․ և պաշտեսցեն զԱ՟ծ ։ քանզի զայդ
խնդրէիք դուք ։ և հանին զնոսա
յերեսաց փարաւոնի ։ * Եւ ասէ Տ՟ր 12
զմովսէս․ ձգեա զձեռն քո 'ի վ՟ր երկրին
եգիպտացւոց ․ և ելցէ մարախ 'ի վ՟ր
երկրին եգիպտացւոց․ և կերիցէ զա՟մ
բանջար երկրին․ և զամենայն պտուղ
ծառոց ․ զոր եթող կարկուտն ։ * Եւ 13
ամբարձ մովսէս զձեռն իւր յերկինս․ և
էած Տ՟ր հողմ հարաւոյ յերկիր զտի՛ւն
ամենայն՝ և զգիշերն ա՟մ ․ իբրև առա
ւօտ եղև ․ և հողմ հարաւոյ էառ զմա
րախն ։* Եւ եհան յա՟մ երկիրն եգիպ 14
տացւոց ․ և դադարեցոյց 'ի վերայ ա՟մ
սահմանացն եգիպտացւոց ։ յառաջ
քան զայն ոչ եղև այնպիսի մարախ․ և
յետ այնորիկ ոչ եղև այնպիսի ։* Եւ 15
ծածկեաց զամենայն երեսս երկրի․ և
ապականեցաւ երկիրն՝ և եկեր զա՟մ
բանջար երկրին՝ և զա՟մ պտուղ ծա
ռոց ․ որ մնաց 'ի կարկտէ անտի ․ և ոչ
մնաց կանաչ ․ ոչ 'ի ծառս , և ոչ յա՟մ
բանջար դաշտի յա՟մ երկրին եգիպ
տացւոց ։ * Եւ փութացաւ փարաւոն 16
կոչել զմովսէս և զահարոն, և ասէ ․ մե
ղայ առաջի Տ՟ն Ա՟յ ձերոյ , և ձեզ ։
* Ա՟րդ ներեցէք այսմ ևս յանցանաց 17
իմոց ․ և աղաչեցէք առ Տ՟ր Ա՟ծ ձեր ․
և փարատեսցէ յինէն զմահս զայս

18 * Եւ ել մովսէս 'ի փարաւոնէ․ և եկաց
19 յաղօթս առ Ա՟ծ ։ * Եւ դարձոյց Տ՟ր
հողմ սաստիկ 'ի ծովէ ․ և էառ զմա
րախն՝ և ած 'ի ծովն կարմիր․ և ոչ
մնաց մարախ յա՟մ երկրին եգիպտաց
20 ւոց ։ * Եւ խստացոյց Տ՟ր զսիրտն փա
րաւոնի ․ և ոչ արձակեաց զորդիսն
21 իսրայէլի ։* Եւ ասէ Տ՟ր ցմովսէս՝ ձգեա
զձեռն քո յերկինս ․ և եղիցի խաւար
'ի վերայ երկրին եգիպտացւոց ․ խա
22 ւար շօշափելի ։* Ձգեաց մովսէս զձեռն
իւր յերկինս ։ և եղև խաւար՝ և մէգ՝
և մութ 'ի վերայ ա՟մ երկրին եգիպ
23 տացւոց զերիս աւուրս ։ * ‖ Եւ ոչ ոք ‖ Իմաս․
տեսանէր զեղբայր իւր զերիս աւուրս։ 17․2․
և ոչ յարեաւ ոք յանկողնէ իւրմէ զե
րիս աւուրս ։ ‖ բայց ա՟մ որդւոյն իս ‖ Իմաս․
րայէլի լոյս էր յա՟մ բնակութիւն իւր 18․1․
24 եանց ։* Եւ կոչեաց փարաւոն զմովսէս
և զահարոն՝ և ասէ ցնոսա ․ երթայք,
պաշտեցէք զՏ՟ր Ա՟ծ ձեր ․ բայց զար
ջառ և զոչխար ձեր աստէն թողէք ․
և այլ աղխ ձեր երթիցեն ընդ ձեզ ։
25 * Եւ ասէ մովսէս՝ նաև դու ևս տացես
մեզ զողջակէզս և զոհս՝ զոր առնի
26 ցեմք Տ՟ն Ա՟յ մերում ։ * Այլ մեր
անասուն իսկ երթիցէ ընդ մեզ․ և ոչ
թողուցումք և ոչ կճղակ մի ․ քանզի
'ի նոցանէ առնուցումք պաշտել զՏ՟ր
Ա՟ծ մեր ․ և մեք ոչ գիտեմք, զինչ մա
տուցանիցեմք Տ՟ն Ա՟յ մերում, մինչև
27 անդր հասանիցեմք ։ * Եւ խստացոյց
Տ՟ր զսիրտն փարաւոնի․ և ոչ կամեցաւ
28 արձակել զն՟ս ։* Եւ ասէ փարաւոն․ 'ի
բաց գնա յինէն․ զգոյշ լեր անձին քում․
մի ևս յաւելուցուս տեսանել զերեսս իմ․
զի յորում աւուր երևիցիս դու ինձ՝
29 մեռանիս ։* Եւ ասէ մովսէս ․ ասացեր,
ոչ ևս երևեցայց երեսաց քոց ։

## ԳԼ ։ ԺԱ ։

1 Եւ ասէ Տ՟ր ցմովսէս ․ այլ միւսևս
հարուած ածից 'ի վ՟ր փարաւո
նի և 'ի վ՟ր եգիպտոսի ․ և ապա արձա
կեսցէ զձեզ աստի ․ այլ յորժամ ար
ձակեսցէ զձեզ ․ ամենևին հանիցէ
2 զձեզ աստի ։ * ‖ Արդ խօսեաց դաղտ ‖ Ել․
յականջս ժողովրդեանն ․ և խնդրես 3․22․
ցեն իւրաքանչիւրոք յընկերէ իւրմէ՝ Ել․
և կին 'ի դրացւոյ իւրմէ , անօթս ոս 12․35․
կեղէնս ․ և անօթս արծաթեղէնս ․
3 և հանդերձս ։ * Եւ ետ Տէր շնորհս
ժողովրդեանն իւրում առաջի եգիպ
տացւոց՝ և տուին նոցա 'ի զարդ։ ‖ և այրն ‖ Սիրաք․
մովսէս մեծարու եղև յոյժ առաջի ե 45․1․
գիպտացւոյն ․ և առաջի փարաւոնի՝
և առաջի ա՟մ ծառայից նորա ․ և յաչս
4 ժողովրդեանն ։ * Եւ ասէ մովսէս ․

այսպէս ասէ Տր. զհասարակ գիշերաւ ես մտից 'ի մէջ Եգիպտոսի: 5 *Եւ սատակեսցի ամ անդրանիկ յերկրին Եգիպտացւոց. յանդրանկէ անտի փարաւոնի՝ որ նստի յաթոռ նորա մինչև ցանդրանիկ աղախնոյն՝ որ կայցէ առ երկանս. և մինչև ցանդրանիկ ամենայն անասնոյ: 6 *Եւ եղիցի աղաղակ մեծ յամ երկրիդ Եգիպտացւոց. որպիսի ոչ եղև. և ոչ ևս յաւելցի լինել նոյնպիսի: 7 *Եւ 'ի մէջ ամենայն որդւոցն Իսրայէլի ոչ կռնչեսցէ. և ոչ շուն մի լեզուաւ իւրով. և ոչ 'ի մարդոյ մինչև յանասուն. զի գիտասցես որչափ ինչ զքանչելիս արասցէ Տր 'ի մէջ Եգիպտացւոցդ. և 'ի մէջ Իսրայէլի: 8 *Եւ իջցեն ամենայն ծառայքս քո այսոքիկ առ իս. և երկիրպագցեն ինձ, և ասասցեն. Ել դու և ամենայն ժողովուրդ քո. որում դուդ առաջնորդես. և ապա ելից: 9 *Եւ ել Մովսէս 'ի փարաւոնէ լի բարկութբ. և ասէ Տր ցՄովսէս. ոչ լուիցէ ձեզ փարաւոն: զի յաճախեցից զնշանս իմ, և զարուեստս յերկրիդ Եգիպտացւոց: 10 *Եւ Մովսէս և Ահարոն արարին զամ նշանս և զարուեստս զայսոսիկ՝ յերկրին Եգիպտացւոց առաջի փարաւոնի: Եւ խստացոյց Տր զսիրտն փարաւոնի. և ոչ կամեցաւ արձակել զորդիսն Իսրայէլի յերկրէն Եգիպտացւոց:

## ԳԼ. ԺԲ.

1 Եւ խօսեցաւ Տր ընդ Մովսէսի և ընդ Ահարոնի յերկրին Եգիպտացւոց, և ասէ: 2 *Ամիսս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց: առաջին եղիցի ձեզ յամիսս տարւոյ: 3 *Խօսեաց ընդ ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրայէլի՝ և ասասցես. 'ի տասներորդում ամսեանս այսորիկ առցեն իւրաքանչիւր ոչխար ըստ տունս ազգացն. ոչխար ըստ երդ: 4 *Եւ եթէ սակաւ իցէ 'ի տանն, որպէս թէ չիցէ բաւական լինել ոչխարին, առցէ ընդ իւր զդրացի իւր և զմերձաւոր իւր ըստ մարդաթուէ. իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում համարեսցի յոչխարն: 5 *Ոչխար կատարեալ՝ արու՝ տարևոր՝ անարատ լիցի ձեզ: յոդեաց և յայծեաց առնուցուք: 6 *Եւ եղիցի ձեզ պահեալ մինչև 'ի չորս և 'ի տասն աւուր ամսոյս այսորիկ: և զենցեն զնա ամ բազմութի ժողովրդեան որդւոցն Իսրայէլի ընդ երեկս: 7 *Եւ առցեն յարենէ անտի. և դիցեն 'ի վերայ երկուց սեմոցն և բարաւորի տանցն. յորս ուտիցեն զնա 'ի նոսա: 8 *Եւ կերիցեն զմիսն 'ի գիշերիս յայսմիկ խորովեալ հրով: բաղարջ ընդ եղեգի կերիցեն: 9 *Եւ մի՛ ուտիցէք 'ի նոցանէ հում. և մի՛ պախ եփեալ ջրով՝ այլ խորովեալ հրով, զգլուխն ոտիւքն հանդերձ և զփորոտին նորա: 10 *Եւ մի՛ թողուցուք 'ի նմանէ յայգ: և ոսկր մի՛ բեկանիցէք 'ի նմանէ: և որ ինչ մնայցէ 'ի նմանէ յայգ, հրով այրեսջիք: 11 *Եւ այսպէս ուտիցէք, գօտիք ձեր ընդ մէջ: և կօշիկք ձեր յոտս: և ցուպք ձեր 'ի ձեռին: փութանակի ուտիցէք. զի զատիկ Տն է: 12 *Եւ անցից ընդ ամենայն երկիրդ Եգիպտացւոց 'ի գիշերի յայսմիկ: և հարից զամ անդրանիկ յերկրիդ Եգիպտացւոց 'ի մարդոյ մինչև յանասուն: և յամենայն դիսն Եգիպտացւոց արարից զվրէժխնդրութի. զի ես եմ Տր: 13 *Եւ եղիցի ձեզ արիւնդ նշանակեալ 'ի վերայ տանց. յորս իցէք դուք անդ: և տեսից զարիւնդ. և ապրեցուցից զձեզ. և ո՛չ լինիցին 'ի ձեզ հարուածք 'ի սատակել, յորժամ հարկանիցեմ յերկրիդ Եգիպտացւոց: 14 *Եւ եղիցի ձեզ արիւնդ այդ 'ի յիշատակ. և տօնիցէք զդա տօն Տն յազգս ձեր: օրէն յաւիտենական տօնիցէք զդա: 15 *Եօթն օր բաղարջ ուտիցէք. յառաջնմէ իսկ օրէ անտի անհետ առնիջիք զխմոր 'ի տանց ձերոց: ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն այն յԻսրայէլէ: 16 *Յառաջնմէ օրէ անտի մինչև ցօրն եօթներորդ նուիրեալ եղիցի ձեզ սուրբ: զամենայն գործ սպասու մի՛ գործիցէք 'ի նմա, բայց միայն որ գործիցի ամ անձին, այն միայն գործեսցի ձեզ: 17 *Եւ պահեսջիք զպատուիրանս զայս, զի յաւուր յայսմիկ հանից զզօրութի ձեր յերկրէս Եգիպտացւոց. և առնիցէք զօրս զայս յազգս ձեր օրէն յաւիտենական: 18 *Սկսանիլ չորեքտասաներորդի աւուր ամսոյն առաջնոյ՝ յերեկորեայ բաղարջ ուտիցէք, մինչև ցքսան և մի օր ամսոյն ցերեկոյ: 19 *Եօթն օր մի՛ գտցի խմոր 'ի տունս ձեր, ամ որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն այն 'ի ժողովրդենէ Իսրայէլի, յեկաց և բնակաց երկրին: 20 *Խմորեալ մի՛ ուտիցէք. յամենայն բնակութե ձերում ուտիցէք բաղարջ: 21 *Եւ կոչեաց Մովսէս զամ ծերակոյտ որդւոցն Իսրայէլի, և ասէ ցնոսա: երթայք առէք ձեզ ոչխար ըստ ազգաց ձերոց, և զենջիք 'ի զատիկ: 22 *Եւ առնուցուք մշտիկ զոպայի թաթաւեալ յարեան. որ առ դրօքն իցէ: և սրսկեսջիք զբարաւո-

րան

Ղևտ. 23.5. Թուոց 28.16.

Եբր. 11.28.

բաւն և զերկոքումբք սեմոցն յարենէ անտի որ առ դրօքն ։ բայց դուք մի ելանիցէք իւրաքանչիւր ըստ դրան տան իւրոյ մինչև ցառաւօտ ։ 23 * Եւ անցցէ Տր̄ հարկանել զեգիպտացիսդ. և տեսանիցէ զարիւնն որ ՚ի վր̄ բարաւորին և ՚ի վր̄ երկոցունց սեմոցն՝ և զանց առնիցէ Տր̄ զդրօքն, և ոչ տայցէ թոյլ սատակչին մտանել ՚ի տունս ձեր, և հարկանել ։ 24 * Եւ պահեսջիք զբանս զայս՝ օրէն քեզ և որդւոց քոց մինչև ցյաւիտեան ։ 25 * Եւ եթէ մտանիցէք յերկիրն՝ զոր տայցէ ձեզ Տր̄՝ որպէս և խօսեցաւ, պահեսջիք զպաշտօնդ զայդ ։ 26 * Եւ եղիցի եթէ ասիցեն ցձեզ որդիք ձեր. զինչ է պաշտօնս այս ձեզ ։ 27 * Ասասջիք նոցա, եթէ զոհ զատկի Տն̄ է այս. յորժամ պահեաց զտունս որդւոցն իսրայէլի յեգիպտոս. մինչ հարկանէր զեգիպտացիսն, և զտունս մեր ապրեցոյց ։ և խոնարհեցաւ ժողովուրդն՝ և երկիր եպագ ։ 28 * Եւ գնացեալ որդիքն իսրայէլի արարին՝ որպէս պատուիրեաց Տր̄ մովսիսի և ահարոնի. նոյնպէս և արարին ։ 29 * Եւ եղև ՚ի հասարակ գիշերի՝ և Տր̄ եհար զամենայն անդրանիկ յերկրին եգիպտացւոց. յանդրանկանէ անտի փարաւոնի՝ որ նստէր յաթոռ նր̄. ‖ մինչև յանդրանիկ գերւոյն որ կայր ՚ի վիրապի. և զա̄մ անդրանիկ անասնոյ ։ 30 * Եւ յարեաւ փարաւոն գիշերայն՝ ինքն և ա̄մ ծառայք իւր. և ամենայն եգիպտացիք. և եղև աղաղակ մեծ յամենայն երկրին եգիպտացւոց. զի ոչ գոյր տուն յորում ոչ գոյր մեռեալ ՚ի նմա ։ 31 * Եւ կոչեաց փարաւոն զմովսէս և զահարոն գիշերայն ։ և ասէ ցնոսա, արիք՝ և ելէք ՚ի ժողովրդենէ իմմէ. և դուք և որդիքն իսրայէլի՝ երթայք և պաշտեցէք զՏր̄ Աճ ձեր. որպէս ասացիք ։ 32 * Եւ զարջառ և զոչխար ձեր առեալ գնացէք՝ որպէս և ասացիքն ։ բայց և զիս օրհնեցէք ։ 33 * Եւ բռնադատէին եգիպտացիքն զժողովուրդն, փութանակի հանել զնոսա յերկրէ անտի ։ քանզի ասէին՝ թէ ամենեքին իսկ մեռանիմք ։ 34 * Եւ էառ ժողովուրդն զհայսն իւրեանց մինչչև խմորեալ էր. և զզանգուածն իւրեանց ծրարեալ ՚ի կտաւս իւրեանց, ՚ի վերայ ուսոց իւրեանց ։ 35 * Եւ որդիքն իսրայէլի արարին ‖ որպէս և հրամայն էտ նոցա մովսէս ։ և խնդրեցին յեգիպտացւոցն անօթս ոսկեղէնս՝ և անօթս արծաթեղէնս, և հանդերձս ։ 36 * Եւ Տէր ետ շնորհս ժողովրդեան իւրում առաջի եգիպտացւոց և ետուն նր̄ ՚ի զարդ ։ և կողոպտեցին զեգիպտացիսն ։ 37 * Եւ չուեցին որդիքն իսրայէլի ՚ի հռամեսեայ ՚ի սոքքոթ, վեց հարիւր հազար այր հետևակ, թող զայլ աղխս ։ 38 * Եւ խառնիճաղանճ բազում ել ը̄ նոսա, և արջառ՝ և ոչխար, և անասուն բազում յոյժ ։ 39 * Եւ եփեցին զհայսն՝ զոր հանին յեգիպտոսէ նկանս բաղարջս, քանզի ոչ խմորեցաւ. զի հանին զնո եգիպտացիքն՝ և ոչ կամէին մնալ, և ոչ պաշար արարին իւրեանց ճանապարհի ։ 40 * Եւ բնակութի որդւոցն իլի զոր բնակեցան յերկրին եգիպտացւոց. և յերկրին քանանացւոց, ինքեանք և հարք իւրեանց ամք չորեք հարիւր և երեսուն ։ և եղև յետ չորեքհարիւր և երեսուն ամի ։

41 * Յաւուր յայնմիկ ելին ամենայն զօրութիւնք Տն̄ յերկրէն եգիպտացւոց ։ 42 * Գիշերի, որ էր յառաջապահեստ Տն̄. հանել զնոսա յերկրէն եգիպտացւոց ։ այն գիշեր յառաջապահեստ Տն̄ լինել ամենայն որդւոցն իսրայէլի յազգս նոցա ։ 43 * Խօսեցաւ Տր̄ ընդ մովսիսի և ը̄ ահարոնի՝ և ասէ ։ այս է օրէն զատկի ։ ամենայն այլազգի մի կերիցէ ՚ի նմանէ ։ 44 * Եւ զա̄մ ծառայ ուրուք և զարծաթագին թլփատեսցես, և ապա կերիցէ ՚ի նմանէ ։ 45 * Պանդուխտն՝ և վարձկանն մի կերիցեն ՚ի նմանէ ։ 46 * ‖ ՚Ի տան միում կերիցի ։ և մի հանիցէք ՚ի մսոյ անտի արտաքս քան զտունն ։ ‖ և զոսկր մի բեկանիցէք ՚ի նմանէ ։ 47 * Ամենայն ժողովուրդ որդւոցն իսրայէլի առնիցէ զայն ։ 48 * Ապա թէ մերձենայցէ առ ձեզ եկամուտ՝ և առնիցէ զզատիկն տեառն, թլփատեսցես զամենայն արու մանուկ նորա, և ապա մերձեսցի առնել զնա, և եղիցի իբրև զբնակ երկրին. ամենայն անթլփատ մի կերիցէ ՚ի նմանէ ։ 49 * Օրէն մի և նոյն կացցէ բնակին և եկին՝ որ գայցէ մերձենալ ՚ի ձեզ ։ 50 * Եւ արարին ամենայն որդիքն իսրայէլի՝ որպէս պատուիրեաց Տէր մովսիսի և ահարոնի. նոյնպէս արարին ։ 51 * Եւ եղև յաւուր յայնմիկ, եհան Տր̄ զորդիսն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց. հանդերձ զօրութը̄ իւրեանց ։

## ԳԼ. ԺԳ.

1 Խօսեցաւ Տր̄ ընդ մովսիսի՝ և ասէ ։ 2 * ‖ Սրբեա դու ինձ զամենայն անդրանիկ նախածին ; որ բանայ զա̄մ արգանդ ՚ի մէջ որդւոցդ իսրայէլի. ՚ի մարդոյ մինչև յանասուն՝ քանզի իմ է ։ 3 * Եւ ասէ մովսէս ցժողովուրդն. յիշես

ջիք

‖ Իմաս. 18. 5. ‖ Վեր. 11. 5.

‖ Վեր. 11. 2.

‖ Թուոց 9. 12. ‖ Յովհ. 19. 36.

‖ Վեր. 34. 19. ‖ Ղևտ. 27. 26. ‖ Թուոց. 8. 16. ‖ Ղուկ. 2. 23.

ջիք զօրս զայս՝ յորում ելէք յեգիպ-
տոսէ՝ ՚ի տանէ ծառայութեան. զի հզօր
ձեռամբ եհան զձեզ Տր աստի ։ և ոչ
ուտիցէք խմորուն ։* 4 Ձի յայսմ աւուր
ելանէք դուք յամսեանն կանխոյ.
5 * Եւ եղիցի յորժամ եթէ տանիցի
զքեզ Տր ԱԾ քո յերկիրն քանանա-
ւոց. և քետացւոց. և ամօրհացւոց. և
խեւացւոց. և յեբուսացւոց. և փերե-
զացւոց. զոր երդուաւ հարցն քոց՝
տալ քեզ. երկիր որ բղխէ զկաթն և
զմեղր ։ և արասցես զպաշտօնս զայս
յամսեանս յայսմիկ. 6 * Զեօթն օր
բաղարջ կերիջիք. և յաւուրն եօթն
երորդի տօն Տն ։ 7 * Բաղարջ կերիջիք
զեօթն օր ոչ երևեսցի առ քեզ խմո-
րուն. և ոչ եղիցի խմոր յամ սահմանս
քո ։ 8 * Եւ պատմեսցես որդւոյ քում
յաւուր յայնմիկ՝ և ասասցես ։ Վասն
այնորիկ արար ինձ Տր ԱԾ, մինչ ելա-
նէի յեգիպտոսէ ։ 9 * Եւ եղիցի քեզ
՚ի նշան ՚ի վերայ ձեռին քո. և յիշա-
տակ առաջի աչաց քոց. զի լինիցին
օրէնք Տն ՚ի բերանի քում. զի հզօր
ձեռամբ եհան զքեզ Տր յեգիպտոսէ.
10 * Եւ պահեսջիք զօրէնս զայս ՚ի ժա-
մանակէ ժամանակս. և յաւուրց յաւ-
ուրս ։ 11 * Եւ եղիցի յորժամ տանիցի
զքեզ Տր ԱԾ քո յերկիրն քանանա-
ւոց ոյր երդուաւ քեզ՝ և հարցն քոց.
և տացէ զնա քեզ ։ 12 * Եւ ‖զատուսցես
Տն զամ արու, որ բանայ զարգանդ.
և զամ որ բանայ զարգանդ յանդոց
և յանասնոց քոց , որ լինիցի քեզ.
արուքն սուրբ Տն լինիցին ։ 13 * Եւ
ամենայն որ բանայցէ զարգանդ իշոյ.
փոխանակեսցես ընդ ոչխարի ։ և եթէ
ոչ փոխանակեսցես, փրկեսցես զնա ։
զամ անդրանիկ որդւոց քոց փրկես-
ցես ։ 14 * Եւ եթէ հարցանիցէ զքեզ
որդին քո յետ այսօրիկ՝ և ասիցէ. թէ
զինչ է այդ. ասասցես նմա՝ զի հզօր
ձեռամբ եհան զմեզ Տէր յերկրէն
եգիպտացւոց. ՚ի տանէ ծառայութեան ։
15 * Յորժամ խստացաւ փարաւոն չար-
ձակել զմեզ , կոտորեաց Տր զամ անդ-
րանիկս յերկրին եգիպտացւոց. յանդ-
րանկանէ մարդոյ, մինչև յանդրանիկ
անասնոյ ։ վասն այսորիկ ես մատու-
ցանեմ Տն զամենայն արու. որ բանայ
զարգանդ. և զամենայն անդրանիկ
որդւոց իմոց փրկեցից ։ 16 * ‖Եւ եղիցի
՚ի նշան ՚ի վերայ ձեռին քոյ ։ և անշարժ
առաջի աչաց քոց. քանզի հզօր ձե-
ռամբ եհան զմեզ Տր յեգիպտոսէ ։
17 * Եւ իբրև արձակեաց փարաւոն զժո-
ղովուրդն. ոչ առաջնորդեաց նոյ ԱԾ
ընդ երկիրն փղշտացւոց. ընդ կարճոյ

‖Ելք. 22. 29. Ն. 34. 19. Եզեկ. 44. 30.

‖Բ. Օր. 6. 8.

ճանապարհ. քանզի ասաց ԱԾ, եթէ
զուցէ զանգիտիցէ ժողովուրդն.
յորժամ տեսանիցէ զպատերազմ, և
18 դառնայցէ յեգիպտոս ։ * Եւ պատեաց
ԱԾ զժողովուրդն ընդ ճանապարհ
անապատին, առ կարմիր ծովուն ։ և
՚ի հինգերորդ ազգի ելին որդիքն իս-
19 րայէլի յերկրէն եգիպտացւոց ։ * Եւ
էառ մովսէս զոսկերսն յովսեփու ընդ
իւր. քանզի երդմնեցոյց յովսէփ զոր-
դիսն իսրայէլի, և ասէ, ‖եթէ այցե-
լութեամբ այց արասցէ ձեզ Տր ։ և հան-
20 ջիք աստի զոսկերս իմ ընդ ձեզ ։ * Եւ
չուեալ որդւոյն իսրայէլի ՚ի սոքքո-
թայ, բանակեցան յոթոմ առ անա-
21 պատաւն ։ * ‖ Եւ ԱԾ առաջնորդէր
նոց զցերեկ սեամբ ամպոյ, ցուցանել
նոցա զճանապարհն ։ և զցայգ՝ սեամբ
հրոյ լուսատու լինել նոցա ՚ի գնալն՝
22 զցայգ և զցերեկ ։ * Եւ ոչ պակասէր
սիւն ամպոյն ՚ի տուէ. և սիւն հրոյն
՚ի գիշերի առաջի ամ ժողովրդեանն ։

‖Ծննդ. 50. 24.

‖Թւոց 14. 14. Նեեմ. 9. 19. Ա. Կոր. 10. 1.

## ԳԼ ։ ԺԴ ։

1 Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և
2 ասէ ։ * Խօսեաց ընդ որդիսն
իսրայէլի , և դարձցին բանակեսցին
դէմ յանդիման հանգրուանին. ընդ
մագդոլ, և ընդ ծովն. հանդէպ բեէղ
սեփոնայ. յանդիման նոցա բանակես-
3 ցին առ ծովեզերբն ։ * Եւ ասասցէ
փարաւոն զորդւոց իսրայէլի թէ մո-
լորեալ են յերկրին, քանզի պատեաց
4 զնոսա անապատն ։ * Եւ ես խստա-
ցուցից զսիրտն փարաւոնի. և պնդես-
5 ցի զհետ դոցա ։* Եւ փառաւորեցայց
՚ի փարաւոն և յամենայն զօրս նորա ։
և ծանիցեն ամ եգիպտացիք՝ թէ ես
6 եմ Տր ։ և արարին այնպէս ։* Եւ ազդ
եղև արքային եգիպտացւոց եթէ փա-
խեաւ ժողովուրդն ։ և շրջեցաւ սիրտն
փարաւոնի՝ և ծառայից իւրոց ՚ի վր
ժողովրդեանն ։ և ասեն, զինչ գոր-
ծեցաք զայն՝ զի արձակեցաք զորդիսն
իսրայէլի. զի մի ծառայիցեն մեզ ։
7 * Եւ հանդերձեաց փարաւոն զկառս
իւր , և տարաւ ընդ իւր զամ ժողո-
վուրդն իւր . և էառ վեց հարիւր
կառս ընտիրս. և զամենայն երիվարս
եգիպտացւոց. և սպառազէնս ՚ի վե-
8 րայ ամենեցուն ։ * Եւ խստացոյց Տր
զսիրտն փարաւոնի արքային եգիպ-
տացւոց , և պնդեցաւ զհետ որդւոյն
իսրայէլի ։ և որդիքն իսրայէլի ելա-
9 նէին բարձրացեալ ձեռամբ ։ * Եւ
‖պնդեցան եգիպտացիքն զհետ նոցա,
և գտին զնոսա բանակեալս առ ծով-
եզերն . և ամ երիվարք՝ և կառք
փա-

‖Յեսու 24. 6. Ա. Մակ. 4. 9.

փարաւոնի. և հեծեալք նորա՝ և զօրք
նր յանդիման հանդրուանին . հան_
դէպ բեէղսեփոնայ: *Եւ եհաս մօտ 10
փարաւոն : և համբարձեալ որդւոցն
իսրայելի զաչս իւրեանց տեսանէին՝
զի բանակեցան եգիպտացիքն 'ի թի
կանց նց, և երկեան յոյժ : *Եւ բո_ 11
ղոքեցին որդիքն իսրայելի առ Տր: և
ասեն ցմովսէս, իբրև թէ ոչ գոյին գե
րեզմանք յերկրին եգիպտացւոց. հա_
ներ զմեզ սպանանել յանապատի աստ
զինչ գործեցեր զայս ընդ մեզ. զի հա
ներ զմեզ յեգիպտոսէ: *Ո՞չ այս բանք 12
են՝ զոր խօսեցաք ընդ քեզ յերկրին
եգիպտացւոց . թէ թոյլ տուր մեզ՝
զի ծառայեսցուք եգիպտացւոցն : զի
լաւ էր մեզ ծառայել եգիպտացւոցն
քան մեռանիլ յայսմ անապատի :
*Եւ ասէ մովսէս ցժողովուրդն, քա_ 13
ջալերեցարուք. պի՛նդ կացէք. և տե_
սանիցէք զփրկութիւն 'ի Տէ. զոր ա_
րասցէ ձեզ այսօր : զի զորօրինակ տե
սիք զեգիպտացիսն այսօր. ո՛չ ևս յաւել
ցիք տեսանել զնս յաւիտեանս ժա_
մանակաց :* Տր տայ պատերազմ ընդ 14
ձեր. և դուք լռեցէք: *Եւ ասէ Տր 15
ցմովսէս՝ զի՞ գոչես առ իս խօսեա՛ց ընդ
որդիսդ իսրայելի՝ և չուեսցեն: *Եւ 16
դու առ զգաւազանդ քո . և ձգեա՛
զձեռն քո 'ի վերայ ծովուն . և պատա
ռեա՛ զնա : և մտցեն որդիքն իսրայելի
'ի մէջ ծովուն ընդ ցամաք:*Եւ ահա 17
ես խստացուցից զսիրտն փարաւոնի,
և զեգիպտացւոցն ամենեցուն. և մտ_
ցեն զկնի դոցա. և փառաւորեցայց ես
'ի փարաւոն : և յամենայն զօրս նորա .
և 'ի կառս նորա . և յերիվարս նորա :
*Եւ ծանիցեն ամ եգիպտացիքն՝ թէ 18
ես եմ Տր. 'ի փառաւորիլ իմում՝ 'ի փա
րաւոն՝ և 'ի կառս նորա . և յերիվարս
նորա : *Եւ ամբարձաւ հրեշտակն 19
Այ . որ երթայր առաջի բանակի
որդւոցն իսրայելի . և չոգաւ զկնի նց.
և վերացաւ սիւն ամպոյն յերեսաց
նց. և եկաց 'ի թիկանց նոցա : *Եւ 20
եմուտ 'ի մէջ բանակի եգիպտաց_
ւոցն , և 'ի մէջ բանակի իսրայէլաց_
ւոցն. և եղև խաւար՝ և մէգ: և էանց
գիշերն. և ոչ խառնեցան ընդ միմեանս
‖ Սաղմ. զամ գիշերն : * ‖ Եւ ձգեաց մովսէս 21
105.9. զձեռն իւր 'ի վերայ ծովուն. և դար_
ձոյց անդրէն զծովն բռնութբ հող_
մոյ հարաւոյ զամ զգիշերն . և արար
‖ Սաղմ. զծովն ցամաք. և պատառեցաւ ջուրն
77.13. և *‖ Եւ մտին որդիքն իսրայելի 'ի մէջ 22
113. 3. ծովուն ընդ ցամաք : և եղև ջուրն
Եբրայ. պարիսպ ընդ աջմէ նց . և ընդ ահե_
11.29. կէ նոցա : * Պնդեցան եգիպտացիքն՝ 23

և մտին զկնի նոցա ամ երիվարք փա
րաւոնի , և կառք նորա՝ և հեծեալք
24 նորա 'ի մէջ ծովուն: *Եւ եղև յա_
ռաւօտու պահուն ‖ հայեցաւ Տր 'ի ‖ Իմաս.
բանակն եգիպտացւոց սեամբ հրոյն 18. 15.
և ամպոյ : և խռովեաց զբանակն ե_
25 գիպտացւոց : *Եւ կապեաց զանիւս
կառաց նոցա. և վարէր զնոսա բռնու
թբ : Ասեն եգիպտացիքն, փախիցուք
յերեսաց իսրայելի . զի Տր պատե_
րազմի վասն նց ընդ եգիպտացիսն :
26 * Եւ ասէ Տր ցմովսէս՝ ձգեա՛ զձեռն
քո 'ի վերայ ծովուդ . և կարկատես_
ցի անդրէն ջուրդ . և ծածկեսցէ զե_
գիպտացիսդ . զկառս դոցա՝ և զհե_
27 ծեալս իւրեանց: *Եւ ձգեաց մովսէս
զձեռն իւր 'ի վերայ ծովուն. և դար_
ձաւ ջուրն ընդ առաւօտն 'ի տեղի
իւր . և եգիպտացիքն փախեան յերե
սաց ջրոյն . և թօթափեաց Տր զե_
գիպտացիսն 'ի մէջ ծովուն:



28 *Եւ դարձուցեալ զջուրն՝ ծածկեաց
զկառս՝ և զհեծեալս՝ և զամ զօրու_
թն փարաւոնի, որք մտեալ էին զհետ
նոցա 'ի ծով անդր : և ոչ մնացին 'ի
29 նոցանէ, և ոչ մի : * Եւ որդիքն իս_
րայելի գնացին ընդ ցամաք 'ի մէջ
ծովուն . և ջուրն պարիսպ էր ընդ
աջմէ նոցա, և ընդ ահեկէ իւրեանց:
30 *Եւ ապրեցոյց Տր զիսրայէլ յաւուր
յայնմիկ 'ի ձեռաց եգիպտացւոցն:
31 * Եւ ետես իսրայէլ զեգիպտացիսն
մե_

մեռեալս առ ափն ծովուն ։ Եւ ետես իսրայէլ զձեռն մեծ՝ զոր արար Տէր ընդ եգիպտացիսն, եւ երկեաւ ժողովուրդն 'ի Տէ․ եւ հաւատացին յԱծ՝ եւ 'ի մովսէս ծառայ նորա ։

## Գլ ։ ԺԵ․

‖ Իմաս․ 10․20․

1 Յայնժամ ‖ երգեաց մովսէս՝ եւ որդիքն իսրայելի զօրհնութիւս զայս Այ, եւ ասեն ։ օրհնեսցուք զՏր, զի փառօք է փառաւորեալ․ զերիվարս եւ զհեծեալս նոցա ընկէց 'ի ծով ։

‖ Եսա․ 12․2․ Սաղմ․ 117․14․

2 * ‖ Օգնական եւ ընդունող իմ Տր, եւ եղեւ ինձ 'ի փրկութիւն․ սա է իմ Այ եւ փառաւորեցից զսա ։ Այ հօր իմոյ՝ եւ բարձր արարից զսա ։ 3 * Տէր խորտակէ զպատերազմունս՝ Տր անուն նորա ։ 4 * Զկառս փարաւոնի եւ զզօրութիւս նորա ընկէց 'ի ծով ։ զընտիրս հեծելոց՝ եւ զսպառազէնս, ընկղմեաց 'ի ծով կարմիր ։ 5 * Խորք ծածկեցին զնոսա․ ընկլան յանդունդս իբրեւ զվէմ ։ 6 * Աջ քո Տէր փառաւորեալ է զօրութբ, աջ քո Տէր խորտակեաց զթշնամիս ։ 7 * Եւ բազմութբ փառաց քոց մանրեցեր զհակառակորդս, առաքեցեր զբարկութիւն քո՝ եւ եկեր զնս իբրեւ զեղէգն ։ 8 * Եւ հողմով սրտմտութե քոյ բարձանեցան ջուրք․ պնդեցան իբրեւ պարիսպ ջուրք․ պնդեցան ալիք 'ի մէջ ծովու ։ 9 * Ասաց թշնամին, հալածեցից՝ եւ հասից․ բաժանեցից զաւար, լցուցից 'ի նոցանէ զանձն իմ ։ սատակեցից սրով իմով․ տիրեսցէ նց ձեռն իմ ։ 10 * Առաքեցեր զհողմ քո․ եւ ծածկեաց զնոսա ծով․ ընկղմեցան իբրեւ զկապար 'ի ջուրս սաստիկս ։ 11 * Ով իցէ նման քեզ յաստուածս Տր․ եւ կամ ով նմանիցի քեզ փառաւորեալդ 'ի սրբս ։ սքանչելի փառօք՝ որ առնես զնշանս ։ 12 * Զգեցեր զաջ քո՝ եւ եկուլ զնոսա երկիր ։ 13 * Առաջնորդեցեր արդարութեամբ ժողովրդեան քում այսմ, զոր փրկեցեր․ մխիթարեցեր զօրութբ քով 'ի բնակութեան սրբութե քոյ ։ 14 * Լուան ազգք՝ եւ բարկացան, եւ երկունք կալան զբնակիչս քանանացւոց ։ 15 * Յայնժամ տագնապեցան դատաւորք եդովմայ, եւ իշխանք մովաբացւոց ։ կալաւ զնոսա դողումն, հալեցան ամ բնակիչք քանանացւոց ։ 16 * Անկցի 'ի վերայ նց ահ եւ երկիւղ․ մեծութբ բազկի քոյ քարասցին ։ մինչեւ անցցէ ժողովուրդ քո Տր․ մինչեւ անցցէ ժողովուրդ քո այս՝ զոր ստացար ։ 17 * Տարեալ տնկեսցես զնս 'ի լեառն ժառանգութե քոյ․ 'ի պատրաստութե բնակութե քոյ․ զոր արարեր Տէր սրբութին․ Տր զոր պատրաստեցին ձեռք քո ։ 18 * Տէր թագաւորէ յաւիտեան՝ եւ յաւիտեանս եւ եւս ։ 19 * Զի մտին երիվարք փարաւոնի կառօք եւ հեծելօք նորա 'ի ծով․ եւ էած 'ի վերայ նց Տր ջուրս ծովուն․ եւ որդիքն իսրայելի գնացին ընդ ցամաք 'ի մէջ ծովուն ։ 20 * Եւ էառ մարիամ մարգարէ քոյր ահարօնի զթմբուկն 'ի ձեռն իւր․ եւ ելին ամ կանայք զհետ նր թմբկօք, եւ պարուք ։ 21 * Եւ յառաջէր մարիամ, եւ ասէր ։ օրհնեսցուք զՏէր՝ զի փառօք է փառաւորեալ․ զերիվարս եւ զհեծեալս ընկէց 'ի ծով ։ 22 * Եւ խաղացոյց մովսէս զորդիսն իսրայելի 'ի կարմիր ծովէ անտի․ եւ էած զնս յանապատն 'ի սուր ։ եւ գնացին երեքօրեայ ճանապարհ յանապատի անդ․ եւ ոչ գտանէին ջուր ըմպելոյ ։ 23 * Եկին 'ի մեռայ․ եւ ոչ կարէին ըմպել ջուր 'ի մեռայն․ քանզի դառն էր․ վասն այնորիկ անուանեաց զանուն տեղւոյն այնորիկ դառնութիւն ։ 24 * Եւ տրտնջեաց ժողովուրդն զմովսիսէ՝ եւ ասէին․ զինչ արբցուք ։ 25 * Աղաղակեաց մովսէս առ Տր ։ եւ եցոյց նմա Տր փայտ ։ եւ եարկ զայն 'ի ջուրն՝ եւ քաղցրացաւ ջուրն ։ ‖ եւ անդ ետ նմա իրաւունս եւ դատաստանս․ եւ անդ փորձեաց զնա ։

‖ Յես․ 5․15․

26 * Եւ ասէ՝ եթէ լսելով լուիցես ձայնի Տն Այ քում․ եւ զհաճոյս առաջի նորա արասցես․ եւ ունկնդիր լիցիս պատուիրանաց նորա․ եւ պահեսցես զամ իրաւունս նորա․ զամ ցաւսն՝ զոր ածի 'ի վերայ եգիպտացւոցն, ոչ ածից 'ի վերայ քո․ զի ես եմ Տէր՝ որ բժշկեմ զքեզ ։

Սիրաք․ 38․5․

27 * ‖ Եւ եկին յեղիմ․ եւ էին անդ երկոտասան աղբիւրք ջրոց․ եւ եօթանասուն ծառ արմաւենեաց․ եւ անդ բանակեցան առ ջրովն ։

‖ Թուոց 33․9․

## Գլ ։ ԺԶ ։

‖ Իմաս․ 11․2․

1 Չուեցին յեղիմայ․ եւ եկին ամ ժողովուրդ որդւոցն իսրայելի յանապատն 'ի սին․ որ է ը եղիմ եւ ը սինայ ։ եւ յաւուրն հնգետասաներորդի յերկրորդի ամսեանն ելանելոյ նց յերկրէն եգիպտացւոց ։ 2 * Տրտնջեաց ամ ժողովուրդ որդւոցն իսրայելի զմովսիսէ, եւ զահարօնէ յանապատի անդ ։ 3 * Եւ ասեն ցնս որդիքն իսրայելի․ լաւ էր թէ մեռեալ էաք հարուածօք 'ի Տնէ յերկրին եգիպտացւոց, մինչ նստէաք առ կաթսայս մսոյն, եւ ուտէաք զհաց յագուրդ․ զի հանիք զմեզ յանապատս յայս, սպանանել զամենայն ժողովուրդս 'ի սովու ։ 4 * Եւ ասէ

Տր

Տր ցմովսէս. ահա ես տեղացից ձեզ հաց յերկնից. և ելցէ ժողովուրդ իմ. և ժողովեսցեն զօրըստօրէն: զի փորձեցից զնա՝ եթէ գնայցէ՛ն յօրէնս իմ, եթէ ոչ: 5 *‖Եւ եղիցի յաւուրն վեցերորդի՝ պատրաստեսցեն, զոր ինչ բերիցենն. և եղիցի կրկին քան զայն՝ զոր օրըստօրէն ժողովիցեն: 6 *Եւ ասեն մովսէս և ահարոն ցամ ժողովուրդ որդւոցն իսրայէլի. ընդ երեկոյս գիտասջիք՝ եթէ Տր էհան զձեզ յերկրէն եգիպտացւոց: 7 *Եւ առաւօտուց տեսջիք զփառսն Տն: 'ի լսել նր զտրտունջ ձեր զԱ,Յ: այլ մեք ո՛վ եմք՝ զի տրտնջէք զմէնջ: 8 *Եւ ասէ մովսէս՝ 'ի տալ ձեզ Տն ընդ երեկոյս միս ուտելոյ. և ընդ առաւօտս հաց յագ. վն լսելոյ Տն զտրտունջ ձեր՝ զոր դուք տրտնջեցիք զմէնջ. քանզի մեք ո՛վ եմք. զի ոչ զմէնջ է տրտունջդ ձեր, այլ զԱ,Յ: 9 *Եւ ասէ մովսէս ցահարոն. ասա ցամ ժողովուրդ որդւոցդ իՂի. մատերո՛ւք առաջի Տն. քանզի լուաւ զտրտունջ ձեր: 10 *Մինչդեռ խօսէր ահարոն ընդ ամ ժողովրդեան որդւոցն իսրայէլի՝ դարձան յանապատն՝ և ահա փառք Տն երևեցան ամպով: 11 *Եւ խօսեցաւ Տր ը̅ մովսէսի՝ և ասէ: 12 *‖Լուա՛յ զտրտունջ որդւոցն իսրայէլի: խօսեաց ընդ նոսա՝ և ասասցես. ընդ երեկոյս միս կերիջիք. և ընդ առաւօտս հացի՛ յագեսջիք. և ծանիջիք՝ թէ ես եմ Տր Ա,Ծ ձեր: 13 *Եւ եղև ընդ երեկոյն, և ել լորամարգին և ծածկեաց զբանակն: 14 *Եւ եղև ընդ առաւօտն՝ ընդ արկանել ցօղոյն շուրջ զբանակաւն. ‖և ահա 'ի վերայ երեսաց անապատին, մանր իբրև զգինձ. սպիտակ իբրև զեղեամն 'ի վերայ երկրին: 15 *Իբրև տեսին զայն որդիքն իսրայէլի, ասեն ընկեր ցընկեր, զի՞նչ է այս. քանզի ո՛չ գիտէին, զինչ իցէ: և ասէ ցնոսա մովսէս. ‖այդ է հաց՝ զոր ետ ձեզ Տր ուտելոյ: 16 *Եւ այս բան է՝ զոր պատուիրեաց Տր. ժողովեցէ՛ք 'ի դմանէ իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում. չափով ը̅ գլուխ. ըստ թուոյ անձանց ձերոց. ըստ իւրաքանչիւր ը̅ վրանս ձեր ժողովեցէ՛ք: 17 *Եւ արարին այնպէս որդիքն իՂի. և ժողովեցին. որ շատ՝ և որ սակաւ: 18 *Եւ չափեցին չափովն. ‖որոյ շատն էր՝ ո՛չ յաւելաւ. և որոյ սակաւն էր՝ ո՛չ պակասեցաւ: իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում ժողովեցին: 19 *Եւ ասէ ցնոսա մովսէս. մի՛ ոք թողցու այտի յայգ: 20 *Եւ ո՛չ լուա՛ն մովսէսի. այլ թողին ոմանք 'ի նմանէ յայգ.

թ

‖ Սերաք. 45.3. ‖ Թւոց 11.7. Սաղմ. 77. 24. Իմաստ. 16.20. Յովհ. 6. 31. ‖ 1. Կոր. 10.3. ‖ 2. Կոր. 8.15.

և եռաց 'ի նմա որդն՝ և նեխեցաւ: և դառնացաւ 'ի նոսա մովսէս: 21 *Եւ քաղէին այգուն այգուն՝ իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում. և իբրև արևն ջեռնոյր, հալէր: 22 *Եւ եղև յաւուրն վեցերորդի, ժողովեցին զպէտսն կրկին. երկուս չափս առ միմի. և մտին ամենայն իշխանք ժողովրդեանն, և պատմեցին մովսէսի: 23 *Ասէ ցնս մովսէս. այս է բան՝ զոր խօսեցաւ Տր: շաբաթ հանգիստ սր Տն վաղի՛ն: որ ինչ եփելոց էք՝ եփեցէք. և որ ինչ հասուցանելոց էք՝ հասուցէք. և զամ զաւելորդն թողուցուք յամանս մինչև ցառաւօտ: 24 *Եւ թողին 'ի նմանէ յայգ. որպէս հրամայեաց նոցա մովսէս. և ո՛չ նեխեցաւ. և ո՛չ եղև 'ի նմա որդն: 25 *Եւ ասէ մովսէս. կերա՛յք զայդ այսօր. քանզի շաբաթ Տն է այսօր. ո՛չ գտանէք այսօր զայդ 'ի դաշտի: 26 *Զվեց օր ժողովեսջիք զայդ. և յաւուրն եօթներորդի շաբաթ է՝ ո՛չ լինիցի 'ի նմա: 27 *Եւ եղև յաւուրն եօթներորդի, ելին ոմանք 'ի ժողովրդենէ անտի քաղել՝ և ո՛չ գտին: 28 *Եւ ասէ Տր ցմովսէս. մինչև յե՞րբ ո՛չ կամիք լսել պատուիրանաց իմոց, և օրինաց: 29 *Տեսէք զի Տր ետ ձեզ զօրս զայս շաբաթ. վասն այնորիկ ինքն ետ ձեզ յաւուրն վեցերորդի՝ հաց երկուց աւուրց. նստջի՛ք իւրաքանչիւր 'ի տունս ձեր. և մի՛ ոք ելանիցէ 'ի տեղւոջէ իւրմէ յաւուրն եօթներորդի: 30 *Եւ շաբաթացաւ ժողովուրդն յաւուրն եօթներորդի: 31 *Եւ անուանեցին որդիքն իսրայէլի զանունն նորա մանն: և նա էր իբրև զսերմն գինձոյ սպիտակ. և համ նորա իբրև զկորկոտ մեղու: 32 *Եւ ասէ մովսէս. այս բան է՝ զոր հրամանն ետ Տէր. լցէք լի չափով զմանանայդ յաման մի. և պահեցէք յազգս ձեր. զի տեսանիցեն զհացդ՝ զոր կերիք դուք յանապատի աստ. 'ի ժամանակի իբրև էհան զձեզ Տէր յերկրէն եգիպտացւոց: 33 *Եւ ասէ մովսէս ցահարոն. առ սափոր մի ոսկի. և արկցես 'ի նա լի չափովդ մանանայ. և դիցես զդա առաջի Ա,Յ 'ի պահեստ յազգս ձեր: 34 *Որպէս հրամայեաց Տէր մովսէսի. և եդ զայն ահարոն առաջի վկայութեն 'ի պահեստ: 35 *‖Եւ որդիքն իսրայէլի կերին զմանանայն զքառասուն ամ, մինչև եկին 'ի շէն երկրին. զմանանայն ուտէին, մինչև հասին 'ի կողմն փիւնիկեցւոց: 36 *Եւ չափն էր տասներորդ երից գրուաց:

‖ Նեեմ. 9.21. Յեսու. 5.15.

## ԳԼ: ԺԷ։

1 Եւ չուեաց ամենայն ժողովուրդ որդւոցն Իսրայէլի 'ի սին անապատէ. ըստ բանակս իւրեանց բանիւ Տն։ և բանակեցան յռափիդիմ. և ոչ գոյր ջուր ըմպելոյ ժողովրդեանն։

||Թուոց 20.4.

2 *||Եւ բամբասէր ժողովուրդն զմովսէս՝ և ասէին. տուր մեզ ջուր՝ զի արբցուք. և ասէ ցնոսա մովսէս՝ զի՞ բամբասէք զիս. և զի՞ փորձէք զՏր։

3 *Եւ ծարաւեցաւ անդ ժողովուրդն 'ի ջրոյ։ և տրտնջեաց ժողովուրդն զմովսիսէ, և ասեն. ընդէ՞ր հաներ զմեզ յեգիպտոսէ՝ կոտորել զմեզ՝ և զորդիս մեր. և զխաշինս մեր 'ի ծարաւոյ։

4 *Եւ աղաղակեաց մովսէս առ Տր՝ և ասէ. զինչ արարից ժողովրդեանս այսմիկ. սակաւիկ միւս ևս և քարկոծ առնիցեն զիս։

5 *Եւ ասէ Տր ցմովսէս. երթ առաջի ժողովրդեանդ։ և առ ընդ քեզ 'ի ծերոց ժողովրդեանդ. և ըզ գաւազանն քո||որով հարեր զգետն, առ 'ի ձեռին քում. և երթիցես։

|| Վեր. 14.21.

Սաղմ. 77.15. 1. Կորն. 10.4.

6 *Եւ ես հաստեալ կայցեմ անդ յառաջագոյն քան զքեզ 'ի վերայ վիմին 'ի քորեբ. և հարցես զվէմն. և ելցէ 'ի նմանէ ջուր. և արբցէ ժողովուրդդ։ և արար այնպէս մովսէս առաջի որդւոցն Իսրայէլի։

7 *Եւ անուանեաց զանուն տեղւոյն այնորիկ փորձութիւն և բամբասանս. վասն բամբասանաց որդւոցն Իսրայէլի. և վն փորձելոյ նց զՏէր՝ և ասելոյ. եթէ իցէ 'ի մեզ Տր՝ և եթէ ոչ։

||2. Օրէն. 25.17.

8 *||Եկն ամաղեկ. և տայր պատերազմ ընդ Իսրայէլի յռափիդիմ։

Յուդ. 4.13. Իմաս. 11.3.

9 *Եւ ասէ մովսէս ցյեսու. ընտրեա՛ դու քեզ արս զօրաւորս. և ելեալ տացես պատերազմ ընդ ամաղեկայ առ վաղիւ. և ահա ես եկեալ կայցեմ 'ի վերայ գլխոյ բլրոյն. և գաւազանն Այ 'ի ձեռին իմում։

10 *Եւ արար յեսու որպէս ասաց նմա մովսէս. և ճակատեցաւ յանդիման ամաղեկի. և մովսէս՝ և ահարոն՝ և ովր՝ ելին 'ի գլուխ բլրոյն։

11 *Եւ լինէր յորժամ ամբառնայր մովսէս զձեռս իւր՝ զօրանայր իսրայէլ. և յորժամ խոնարհեցուցանէր զձեռս իւր՝ զօրանայր ամաղեկ։

12 *Եւ ծանրեին ձեռքն մովսիսի. և առեալ վէմ՝ դնէին ընդ նովաւ. և նստէր 'ի վերայ նր. և ահարոն՝ և ովր հաստատէին զձեռս նր. մի աստի և մի անտի. և լինէին ձեռքն մովսիսի հաստատեալք մինչև ցմտանել արեգականն։

13 *Եւ էհար յեսու զամաղեկ՝ և զամ զօրս նորա կոտորմամբ սրոյ։

14 *Եւ ասէ Տր ցմովսէս։ գրեա՛ զայդ առ 'ի յիշատակ 'ի գիրս. և տուր յականջս յեսուայ. զի ջնջելով ջնջեցից զյիշատակ ամաղեկայ յերկրէ 'ի ներքոյ երկնից։

15 *Եւ շինեաց մովսէս սեղան Տն. և անուանեաց զանուն նր Տէր ապաւէն իմ։

16 *Եւ ասէ, զի ծածուկ ձեռամբ, պատերազմի Տր ընդ ամաղեկայ յազգաց յազգս։

## ԳԼ: ԺԸ։

1 Եւ լուաւ յոթոր քուրմ մադիամու աներ մովսիսի զամենայն, զոր արար Տէր ընդ մովսիսի, և իսրայէլի ժողովրդեան իւրում. զի էհան Տէր զիսրայէլ յեգիպտոսէ։

2 *Եւ էառ յոթոր աներ մովսիսի զսեփորայ զկին մովսիսի՝ յետ թողլոյն զնա։

3 *Եւ զերկուս որդիս նր. յորոց միումն անուն էր գերսամ. ||ասէ՝ պանդուխտ էի յօտար երկրի։

այն

|| Վեր. 2.22.

4 *Եւ անուն երկրորդին՝ եղիազար. ասէ՝ Այ հօր իմոյ օգնական իմ. և ապրեցոյց զիս 'ի ձեռաց փարաւոնի։

5 *Եւ եկն յոթոր աներն մովսիսի, և որդիք նորա՝ և կին նր, առ մովսէս յանապատն. ուր բնակեալ էր 'ի լերինն Այ։

6 *Ազդ եղև մովսիսի, և ասեն. թէ ահա աներ քո յոթոր՝ գայ առ քեզ. և կին քո՝ և երկու որդիք քո ընդ նմա։

7 *Եւ մովսէս ընդառաջ աներոյն իւրոյ. և երկիր եպագ նմա՝ և համբուրեաց զնա։ և ողջոյն ետուն միմեանց 'ի խաղաղութի. և տարաւ զնա 'ի խորանն։

8 *Եւ պատմեաց մովսէս աներոյն իւրում զամենայն ինչ. զոր արար Տր ընդ փարաւոնի և ընդ եգիպտացիսն վն իսրայէլի՝ և զամ աշխատութիւն՝ որ եղև նց 'ի ճանապարհի. և զի ապրեցոյց զնս Տր։

9 *Եւ զարմացաւ յոթոր 'ի վերայ ամ բարեացն՝ զոր արար նց Տր. և զի ապրեցոյց զնս 'ի ձեռաց եգիպտացւոցն, և 'ի ձեռաց փարաւոնի։

10 *Եւ ասէ յոթոր, օրհնեալ է Տէր՝ որ ապրեցոյց զդոսա 'ի ձեռաց եգիպտացւոցն՝ և 'ի ձեռաց փարաւոնի. զի փրկեաց զժողովուրդդ 'ի ներքուստ ձեռինն եգիպտացւոց։

11 *Արդ՝ գիտեմ թէ մեծ է Տր քան զամ աստուածս։ ||վն այնորիկ՝ զի բռնանային 'ի վե դոցա։

|| Վեր. 1.14. և 5.7. և 10.10. և 14.8.

12 *Եւ էառ յոթոր աներն մովսիսի ողջակէզս՝ և զոհս Այ. և գնացին մովսէս և ահարոն և ամ ծերքն իսրայէլի, ուտել հաց ընդ աներոյն մովսիսի առաջի Տն։

13 *Եւ եղև 'ի վաղիւ անդր. նստաւ մովսէս դատել զժողովուրդն. և կայր ամ ժողովուրդն շուրջ զմովսիսիւ, յառաւօտէ մինչև ցերեկոյ։

14 *Եւ տեսեալ յոթորայ զամենայն ինչ

զոր

զոր առնէր ժողովրդեանն՝ և ասէ. զի՞նչ է բանդ այդ՝ զոր առնես դու ժողովրդեանդ. ընդէ՞ր դու նստիս միայն, և ամենայն ժողովուրդդ կայ շուրջ զքեւ՝ յառաւօտէ մինչև ցերեկոյ: 15 *Եւ ասէ Մովսէս ցաներն իւր. քանզի գայ ժողովուրդդ առ իս խնդրել իրաւունս յԱ՟Յ: 16 *Յորժամ լինիցի ինչ դոցա հակառակութի՟, գան առ իս՝ և ես ընտրեմ ի մէջ իւրաքանչիւր ուրուք. և իմացուցանեմ դոցա զհրամանս Ա՟Յ, և զօրէնս նորա: 17 *Եւ ասէ ցնա աներն Մովսէսի. ոչ ուղիղ է բանդ՝ զոր առնես: 18 *Անհնարին տաժանօք տանջիս դու՝ և ամենայն ժողովուրդդ, որ է ընդ քեզ: ծանր է քեզ բանդ այդ. ‖ ոչ կարես միայն առնել: 19 *Բայց արդ՝ լո՛ւր ինձ, և տաց քեզ խրատ. և եղիցի Ա՟Ծ ընդ քեզ: լե՛ր դու ժողովրդեանդ առ յԱ՟Յ, և տարցես դու զբանս դոցա առ Ա՟Ծ: 20 *Եւ դիցես դոցա վկայութի՟ զհրամանացն Ա՟Յ, և զօրինաց ն՟ր. և ցուցցես դոցա ճանապարհս՝ յորս գնասցեն. և զգործս, զորս գործիցեն: 21 *Եւ դու տե՛ս քեզ յա՟մ ժողովրդենէդ արս զօրաւորս՝ Ա՟Ծապաշտս. արս արդարակորովս. որք ատիցեն զհպարտութի՟. և կացուսցես զն՟ս ի վ՟ր դոցա, հազարապետս, և հարիւրապետս՝ և յիսնապետս՝ և տասնապետս: 22 *Եւ դատեսցեն զժողովուրդդ յա՟մ ժամ. և զբան ինչ մեծ՝ առ քեզ հասուսցանիցեն. և զփոքր ինչ դատաստան՝ ինքեանք դատեսցեն. և թեթևացուսցեն ի քէն. և եղիցին քեզ օգնականք: 23 *Եթէ զայս բան արասցես՝ զօրացուսցէ զքեզ Ա՟Ծ. և կարասցես տոկալ: և ա՟մ ժողովուրդդ երթիցէ ի տեղի իւր խաղաղութ՟բ: 24 *Եւ լուաւ Մովսէս ձայնի աներոյն իւրոյ. և արար զա՟մ՝ զոր միանգամ ասաց նմա: 25 *Եւ ընտրեաց Մովսէս յա՟մ իսրայէլէ արս զօրաւորս. և արար զնոսա ի վերայ ն՟ց հազարապետս՝ և հարիւրապետս՝ և յիսնապետս՝ և տասնապետս: 26 *Եւ դատէին զժողովուրդն յա՟մ ժամ. բայց զբան ինչ մեծ՝ հասուցանէին առ Մովսէս. և զամենայն բան թեթև՝ ինքեանք դատէին: 27 *Եւ արձակեաց Մովսէս զաներն իւր. և գնաց յերկիր իւր:

‖2.( )րէ. 1.12.

## ԳԼ: ԺԹ

1 Յամսեանն ‖ երրորդի ելանելոյ որդւոցն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց. յաւուրն յայնմիկ եկին յանապատն ի սինա: 2 *Չուեցին [թ] յռափիդիմայ. և եկին յանապատն սինայի. և բանակեցան յանապատի անդ. և բանակեցաւ անդ իսրայէլ հանդէպ լերինն: 3 ‖ *Եւ Մովսէս ել ի լեառն Ա՟Յ: և կոչեաց զնա Ա՟Ծ ի լեռնէ անտի, և ասէ. այսպէս ասասցես տանն յակոբայ. և պատմեսցես որդւոցն իսրայէլի: 4 *Դուք ձեզէն տեսէք՝ որչափ ինչ արարի ընդ եգիպտացիսն. և առի զձեզ՝ իբրև ի վերայ թևոց արծուեաց, և յարեցի զձեզ առ իս: 5 *‖ Եւ արդ՝ եթէ լսելով լուիցէք ձայնի իմում, և պահիցէք զուխտն իմ, եղիջիք դուք ինձ ժողովուրդ սեպհական յամենայն ազգաց. ‖ զի իմ է ա՟մ երկիր: 6 *‖ Եւ դուք եղիջիք ինձ ի թագաւորութի՟, և ի քահանայութի՟ և յազգ ս՟ր. զայս բանս խօսեսցիս ընդ որդիսն իսրայէլի: 7 *Եկն Մովսէս՝ և կոչեաց զծերս ժողովրդեանն. և եդ առաջի ն՟ց զամենայն զբանս զայսոսիկ՝ զոր պատուիրեաց նմա Ա՟Ծ: 8 *Պատասխանի ետ ժողովուրդն միահամուռ՝ և ասեն. զա՟մ ինչ զոր ասաց Ա՟Ծ՝ արասցուք՝ և լուիցուք. և տարաւ Մովսէս զպատգամս ժողովրդեանն առ Ա՟Ծ: 9 *Եւ ասէ Տ՟ր ցՄովսէս. ահաւասիկ ես եկից առ քեզ սեամբ ամպոյ. զի լուիցէ ժողովուրդն՝ մինչ ես ընդ քեզ խօսիցիմ. և հաւատասցեն քեզ ի յաւիտեան: և պատմեաց Մովսէս զբանս ժողովրդեանն Տ՟ն: 10 *Եւ ասէ Տէր ցՄովսէս՝ էջ՝ դի՛ր վկայութի՟ ժողովրդեանն. և սրբեա՛ զն՟ս այսօր և վաղիւ. և լուասցեն զձորձս իւրեանց: 11 *Եւ պատրաստեսցին աւուրն երրորդի: զի յաւուրն երրորդի իջցէ Տէր յանդիման ա՟մ ժողովրդեանդ ի լեառնդ սինայ: 12 *Եւ զատուցեալ ժողովուրդն շուրջե և ասասցես, զգո՛յշ կացէք անձանց յելանելոյ ի լեառնն. ‖ և մերձենալոյ ի նա: զի ամենայն որ մերձեսցի ի լեառն՝ մահու սատակեսցի: 13 *Մի՛ մերձեսցի ի նա ձեռն. քանզի քարամբք քարկոծեսցի. և նետիւք խոցոտեսցի: եթէ անասուն իցէ, և եթէ մարդ՝ մի՛ կեցցէ. այլ յորժամ ձայնքն փողին՝ և ամպն վերասցին ի լեռնէ անտի, ելանիցեն նոքա ի լեառն: 14 *Եւ էջ Մովսէս ի լեռնէ անտի առ ժողովուրդն. և սրբեաց զնոսա. և լուացին զձորձս իւրեանց: 15 *Եւ ասէ ցժողովուրդն. պատրաստ լերուք զերիս աւուրս՝ ի կանայս մի՛ մերձենայք: 16 *Եւ եղև յաւուրն երրորդի ընդ առաւօտս. ձայնք՝ և փայլատակունք՝ և ամպ միգախառն ի վերայ լերինն սի-

‖Թուոց 33.15. ‖Գործ. 7.38. ‖2.( )րէ 29.2. ‖Սաղմ. 23.1. ‖1. Պետ. 2.9. ‖Եբր. 12.18.

նայի լինէին՝ և ձայն փողոյն հնչէր մեծաձայն․ և զարհուրեցաւ ամենայն ժողովուրդն, որ էր 'ի բանակի անդ․
17 * Եւ էհան մովսէս զժողովուրդն ընդ առաջ Ա՟Ծ՝ 'ի բանակէ անտի․ և կացուցին զստորոտով լերինն սինայի․
18 * Եւ լեառն սինայ ծխէր առ հասարակ․ քանզի իջեալ կայր Ա՟Ծ 'ի վ՟ն նորա հրով․ և ելանէր ծուխ նր իբրև զծուխ հնոցի․ և զարհուրեցաւ ա՟մ ժողովուրդն յոյժ․
19 * Իբրև հատանէին ձայնք փողոյն 'ի բաց յառաջացեալք և սաստկացեալք յոյժ․ մովսէս խօսէր, և Ա՟Ծ տայր նմա ձայն․
20 * Եւ էջ Տէր 'ի լեառն սինայ 'ի գլուխ լերինն․ և կոչեաց Տէր զմովսէս 'ի գլուխ լերինն, և ել անդր մովսէս․
21 * Եւ խօսեցաւ Ա՟Ծ ընդ մովսեսի, և ասէ, էջ՝ դիր վկայութի ժողովրդեանդ, գուցէ մերձենայցեն հային առ Ա՟Ծ, և անկանիցին բազումք 'ի նոցանէ․
22 * Եւ քահանայքն՝ որք մերձենան առ Ա՟Ծ, սրբեսցին․ գուցէ սատակիցէ 'ի նոցանէ Տ՟ր․
23 * Եւ ասէ մովսէս ցԱ՟Ծ՝ ոչ կարէ ժողովուրդն ելանել 'ի լեառն սինայ․ զի դու ինքնին ուխտեցեր մեզ՝ և ասացեր․ եթէ զատուսցես զլեառնս, և սրբեսցես զդա․
24 * Եւ ասէ Տ՟ր, երթ՝ էջ՝ և ել այսրէն, և ահարոն ընդ քեզ, բայց քահանայքն, և ժողովուրդն մի՛ ժտեսցին ելանել առ Ա՟Ծ, գուցէ սատակիցէ 'ի նոցանէ Տէր․
25 * Էջ մովսէս առ ժողովուրդն՝ և ասէ ցնոսա․

## Գլ․ Ի․

1 Խօսեցաւ Տէր զա՟մ զպատգամս զայսոսիկ՝ և ասէ․
2 * Ես եմ Տ՟ր Ա՟Ծ քո, որ հանի զքեզ յերկրէն եգիպտացւոց 'ի տանէ ծառայութե․
3 * Մի՛ եղիցին քեզ աստուածք բաց յինէն․
4 * Մի՛ արասցես դու քեզ կուռս ըստ ա՟մ նմանութե․ որ ինչ յերկինս 'ի վեր է, և որ ինչ յերկրի 'ի խոնարհ․ և որ ինչ 'ի ջուրս 'ի ներքոյ երկրի․
5 * Մի՛ երկիրպագանիցես նոցա․ և մի՛ պաշտիցես զնոսա․ զի ես եմ Տէր Ա՟Ծ քո՝ Ա՟Ծ նախանձոտ․ որ հատուցանեմ զմեղս հարանց՝ որդւոց՝ յերիս և 'ի չորս ազգս ատելեաց իմոց․
6 * Եւ առնեմ զողորմութի 'ի հազար ազգս սիրելեաց իմոց, և ոյք պահեն զհրամանս իմ․
7 * Մի՛ առնուցուս զանուն Տ՟ն Ա՟Ծ քոյ 'ի վ՟ն սնոտեաց․ զի ոչ սրբեսցէ Տէր զայն, որ առնուցու զանուն նորա 'ի վերայ սնոտեաց․
8 * Յիշեսջի՛ր զօրն շաբաթուց սրբել զնա․
9 * Վեց օր գործեսցես, և արասցես զամենայն զգործ քո․
10 * Յաւուրն եօթներորդի շաբաթ Տ՟ն Ա՟Ծ քոյ, մի՛ գործեսցես 'ի նմա զա՟մ գործ քո․ դու՝ և ուստր քո՝ և դուստր քո․ ծառայ քո․ և աղախին քո․ եզն քո՝ և էշ քո․ և ամենայն անասուն քո․ և եկն քո․ և պանդուխտն որ 'ի քեզ․
11 * Զի վեց օր արար Տ՟ր Ա՟Ծ զերկինս և զերկիր․ և զծով՝ և զա՟մ որ 'ի նոսա․ և հանգեաւ յաւուրն եօթներորդի․ վ՟ն այնորիկ օրհնեաց Տ՟ր զօրն եօթներորդ, և սրբեաց զնա․
12 * Պատուեա՛ զհայր քո և զմայր քո․ զի քեզ բարի լիցի․ և զի երկայնակեաց լիցիս 'ի վ՟ն երկրին բարւոյ ԶԾ զոր Տէր Ա՟Ծ քո տայցէ քեզ․
13 * Մի՛ սպանաներ․
14 * Մի՛ շնար․
15 * Մի՛ գողանար․
16 * Մի՛ սուտ վկայութի վկայեր զընկերէ քումմէ․
17 * Մի՛ ցանկանար տան ընկերի քոյ․ և մի՛ անդոյ նորա․ մի՛ ցանկանար կնոջ ընկերի քոյ․ և մի՛ ծառայի նր․ և մի՛ աղախնոյ նր․ և մի՛ եզին նորա՝ և մի՛ իշոյ նր․ և մի՛ ա՟մ անասնոյ նորա․ և մի՛ ա՟մի զինչ ընկերի քոյ իցէ․
18 * Եւ ա՟մ ժողովուրդն տեսանէր զձայնն՝ և զճառագայթսն, և զբարբառ փողոյն՝ և զլեառն ծխեալ․ զահի հարաւ ա՟մ ժողովուրդն՝ և խորշեցաւ․ եկաց 'ի հեռաստանէ․
19 * Եւ ասեն ցմովսէս․ դու խօսեա՛ց ընդ մեզ՝ և լուիցուք․ և մի՛ խօսեսցի ընդ մեզ Ա՟Ծ․ գուցէ մեռանիցիմք․
20 * Եւ ասէ ցն՟ս մովսէս․ քաջալերեցարո՛ւք․ զի վ՟ն փորձելոյ զձեզ եկն առ ձեզ Ա՟Ծ․ ո՟պ զի լինիցի երկիւղ նորա 'ի ձեզ․ զի մի՛ մեղանչիցէք․
21 * Եւ կայր ժողովուրդն 'ի հեռաստանէ․ և մովսէս եմուտ 'ի մէգն, ուր էր Ա՟Ծ․
22 * Եւ ասէ Տէր ցմովսէս, այսպէս ասասցե՛ս դու տանդ յակոբայ․ և պատմեսցե՛ս որդւոցդ իսրայելի․ դուք ձեզէն տեսէք, զի յերկնից խօսեցայ ընդ ձեզ․
23 * Մի՛ առնիցէք ձեզ աստուածս ոսկեղէնս․ և աստուածս արծաթեղէնս․
24 * Սեղան հողեղէն արասջի՛ք ինձ․ և մատուսջի՛ք 'ի նմա զողջակէզս ձեր․ և զփրկութիս ձեր․ զոչխար ձեր․ և զարջառ ձեր․ յամենայն տեղիս, ուր անուանեցից զանուն իմ անդ․ և եկից առ քեզ՝ և օրհնեցից զքեզ․
25 * Ապա եթէ սեղան 'ի քարանց առնիցես ինձ, մի՛ շինեսցես զնոսա կոփածոյս․ քանզի զձեռին գործին քո մերձեցուցեր 'ի նա․ և պղծեալ է․
26 * Մի՛ ելանիցես ընդ աստիճանս 'ի սեղան իմ, զի մի՛ մերկասցին առականք քո 'ի վերայ նր․

## Գլ։ ԻԱ.

1 Եւ այս իրաւունք են՝ զոր դիցես առաջի նոցա ։ 2 * Եթէ գնեսցես ծառայ եբրայեցի . զվեց ամ ծառայեսցէ քեզ . և յամին եօթներորդի գնասցէ ազատ ձրի ։ 3 * Եթէ ինքն միայն մտեալ իցէ՝ միայն գնասցէ . և եթէ կնաւ համդերձ մտեալ իցէ, ելցէ և կինն ընդ նմա ։ 4 * Ապա եթէ տէրն իւր տացէ նմա կին . և ծնանիցի նմա ուստերս և դստերս . կինն և որդիք՝ տեառն նորա եղիցին . և նա միայն ելցէ ։ 5 * Ապա եթէ պատասխանի տուեալ ասիցէ ծառայն . սիրեցի զտէր իմ . և զկին իմ . և զորդիս իմ . և ոչ գնամ յազատութիւն ։ 6 * Տարցի զնա տէրն իւր յատեան Աստուծոյ . և ապա մատուսցէ զնա առ սեամս դրանն . և ծակեսցէ զունկն նորա հերամբ . և ծառայեսցէ նմա յաւիտեան ։ 7 * Իսկ եթէ վաճառեսցէ ոք զդուստր իւր յաղախնութիւն, մի գնասցէ որպէս ելանիցեն աղախնայք ։ 8 * Եթէ ոչ լինիցի հաճոյ յաչս տեառն իւրոյ՝ որում հաստեցաւն՝ փրկեսցէ զնա . բայց յազգ օտար չէ իշխան վաճառել . զի անարգեաց զնա ։ 9 * Ապա թէ որդւոյ իւրում հաստեսցէ զնա, ըստ օրինաց դստերաց արասցէ նմա ։ 10 * Ապա թէ առնուլ այլ առնուցու . զօրէնս և զհանդերձ նորա՝ և զմերձաւորութիւն մի հատցէ ՚ի նմանէ ։ 11 * Ապա թէ զերիս զայսոսիկ ոչ առնիցէ նմա, ձրի իսկ ելցէ առանց արծաթոյ ։ 12 * Եթէ հարցէ ոք զոք՝ և մեռանիցի, մահու մեռցի և նա ։ 13 * Իսկ որ ոչ կամաւ, այլ Աստուած մատնեաց ՚ի ձեռս նորա, Տացի նմա տեղի՝ ուր փախիցէ սպանօղն ։ 14 * Իսկ եթէ մտաբերեսցէ ոք յընկեր իւր, սպանանել զնա նենգութեամբ՝ և փախիցէ, և ՚ի սեղանոյ իմմէ առնուցուս զնա՝ և սպանանիցես ։ 15 * Որ հարկանէ զհայր իւր՝ կամ զմայր իւր՝ մահու մեռցի ։ 16 * Որք գողասցի յորդւոց Իսրայելի՝ և վաճառեսցէ զնա . և գտցի առ նմա՝ մահու մեռցի ։ 17 * Որ բամբասեսցէ զհայր իւր՝ կամ զմայր իւր, մահու մեռցի ։ 18 * Եթէ կագիցին արք երկու . և հարկանիցէ ոք ՚ի նոցանէ զընկեր իւր քարիւ կամ բռնցի՝ և ոչ մեռանիցի, այլ դնիցի ՚ի մահիճս ։ 19 * Եթէ յառնիցէ այրն, և շրջիցի արտաքոյ ՚ի ցպոյ, անպարտ լիցի՝ որ էհարն . բայց զխափանածոյ նորա՝ և զբժշկութեան տուժեսցի ։ 20 * Եթէ ոք հարցէ զծառայ իւր՝ կամ զաղախին իւր գաւազանաւ, և մեռցի ՚ի ձեռանէ նորա, դատաստանաւ վրէժխնդրութիւն լիցի ։ 21 * Բայց թէ մի օր՝ կամ զերկուս կեցցէ, մի խնդրեսցի վրէժն . զի գինք արծաթոյ իւրոյ են ։ 22 * Իսկ եթէ կռուիցին արք երկու . և հարկանիցեն զկին յղի . և ելանիցէ մանուկն անկար, կէս տուժեսցի . որչափ ինչ արկանիցէ նմա այր կնոջն . և տացէ աղաչելով ։ 23 * Ապա եթէ կերպարանեալ իցէ . տացէ անձն ընդ անձին ։ 24 * Ակն ընդական . ատամն ընդ ատաման . ձեռն ընդ ձեռին . ոտն ընդ ոտին ։ 25 * Խարան ընդ խարանի . վէր ընդ վիրի . հարուած ընդ հարուածոյ ։ 26 * Իսկ եթէ հարցէ ոք զակն ծառայի իւրոյ . կամ զակն աղախնոյ իւրոյ՝ և կուրասցուսցէ, արձակեսցէ զնոսա ազատս փոխանակական նոցա ։ 27 * Եւ եթէ զատամն ծառայի իւրոյ կամ զատամն աղախնոյ թափեսցէ, արձակեսցէ ազատս փոխանակ ատաման նոցա ։ 28 * Իսկ եթէ հարցէ ցուլ զայր՝ կամ զկին՝ և մեռանիցին, ցուլն քարկոծ լիցի . և միս նորա մի կերիցի . և տէր ցլուն անպարտ լիցի ։ 29 * Ապա եթէ ցուլն հարկանօղ իցէ յերէկն և յեռանդն, և բողոքեալ իցէ տեառն նորա, և նորա չիցէ ՚ի միջոյ բարձեալ, և սպանանիցէ զայր, կամ զկին, ցուլն քարկոծ լիցի . և տէր ցլուն առ նմին մեռցի ։ 30 * Իսկ եթէ փրկանք անկանիցին ՚ի վերայ նորա, տացէ փրկանս ընդ անձին իւրում, ըստ նմին որչափ ինչ արկանիցեն նմա գին ։ 31 * Եւ եթէ զուստր կամ զդուստր հարկանիցէ, ըստ նմին օրինակի արասցեն նմա ։ 32 * Իսկ եթէ զծառայ՝ կամ զաղախին հարկանիցէ ցուլն, երեսուն կրկին սատեր արծաթ տացէ տեառն նոցա . և ցուլն քարկոծ լիցի ։ 33 * Իսկ եթէ բացցէ ոք զհոր, և կամ փորեսցէ ջրհոր, և ոչ խփանիցէ զնա, և անկանիցի անդ արջառ՝ կամ էշ ։ 34 * Տէր հորոյն տուժեսցի արծաթ . և տայցէ տեառն նոցա . և շաղիղն նորա լիցի ։ 35 * Իսկ եթէ հարցէ ցուլ ուրուք՝ զցուլ ընկերի իւրոյ՝ և մեռցի, վաճառեսցեն զցուլն կենդանի, և բաժանեսցեն զգինս նորա . և զցուլն սպանեալ բաժանեսցեն ։ 36 * Ապա եթէ յերէկն և յեռանդն գիտէին զցուլն՝ և բողոքեալ իցէ տեառն նորա, և տեառնն չիցէ ՚ի միջոյ բարձեալ զնա, տուժեսցի ցուլ ընդ ցլոյ, և սպանեալն նորա լիցի ։

## Գլ։ ԻԲ.

1 Իսկ եթէ գողասցի ոք զարջառ կամ զոչխար, և սպանցէ կամ վաճառեսցէ

Marginal references: Ղև. 15.12. Երկ. 34.14. — Ղևտ. 24.17. — Թւ. 19.2. — Ղևտ. 20.9. Առակ. 20.20. Մատ. 15.4. Մարկ. 7.10. — Ղևտ. 24.20. Բ. Օրէ. 19.21. Մատ. 5.38.

ռեսցէ, հինգ արջառ ընդ արջառոյն տուժեսցի. ‖ և չորս ոչխար ընդ ոչխարի ։ 2 * Իսկ եթէ յական գտանիցի գող՝ և խոցեալ մեռանիցի, չէ այն նմա 'ի սպանութիւն ։ 3 * Ապա եթէ արեգն 'ի վերայ նորա ծագիցի, մահապարտ է՝ փոխարէն մեռցի ։ ապա թէ ոչինչ գտանիցի նորա՝ վաճառեսցի փոխանակ գողութեան իւրոյ ։ 4 * Իսկ եթէ ըմբռնեսցի, և գտցի 'ի ձեռին նորա գողօնն՝ յարջառոյ՝ և յիշոյ՝ մինչև ցոչխար, կրկին տուժեսցի ։ 5 * Եթէ արածիցէ ոք զանդ, կամ զայգի, և թողլ տայցէ խաշին իւրում արածել զանդ այլոց, յիւրմէ անդոյ անտի տուժեսցի ըստ արդեանն ։ ապա եթէ զամենայն իսկ զանդն արածիցէ, զընտիր զկողմն անդոյ իւրոյ, և զընտիր այգւոյ իւրոյ տուժեսցի ։ 6 * Իսկ եթէ ելանիցէ հուր՝ և գտանիցէ փուշ, և ընդ նմին այրիցէ զկալ՝ կամ զորան, կամ զանդ, տուժելով տուժեսցի՝ որոյ զհրդեհն հանեալ իցէ ։ 7 * Իսկ եթէ ոք տայցէ ընկերի իւրում արծաթ, կամ այլ ինչ կարասի զիւր յաւանդ, և գողանայցի 'ի տանէ առնն. եթէ գտցի՝ որ գողացաւն՝ կրկին տուժեսցի ։ 8 * Ապա եթէ ոչ գտցի՝ որ գողացաւն, մատիցէ տէր տանն առաջի Տն՝ և երդուիցի. եթէ իւր չէ նենգեալ ամենևին զաւանդ ընկերի իւրոյ ։ 9 * Ըստ ամենայն վնասակար բանի՝ յարջառոյ, և յիշոյ՝ և յոչխարէ, և 'ի հանդերձէ, և յամենայն կորստենէ՝ որում վնասակար առնիցեն. որ զինչ իցէ առաջի Տն եկեսցէ դատաստան երկոցունց. և որ ոք 'ի նոցանէ ըմբռնեսցի 'ի ձեռն Տն, կրկին տուժեսցի ընկերի իւրում ։ 10 * Եւ եթէ տացէ ոք ընկերի իւրում էշ, կամ եզն, կամ ոչխար, կամ այլ ինչ անասուն 'ի պահեստ, և բեկցի՝ կամ մեռցի, կամ գերի վարեսցի՝ և ոչոք գիտասցէ ։ 11 * Երդումն Տն լիցի 'ի միջի երկոցունց. եթէ նենգամտօք ինչ չիցէ գնացեալ ամենևին՝ ը͞ աւանդ ընկերին իւրոյ. ապա յանձն առցէ տէր նր. և մի տուժեսցի ։ 12 * Իսկ ‖ եթէ գողութբ գողանայցէ 'ի նմանէ, տուժեսցի տեառն նր ։ 13 * Ապա եթէ գազանաբեկ լինիցի, ածցէ վկայ 'ի գէշ անդր՝ և մի տուժեսցի ։ 14 * Իսկ եթէ խնդրեսցէ ոք յանօթ յընկերէ իւրմէ՝ և բեկցի, կամ մեռցի, կամ գերի գնասցէ, և տէր նր չիցէ ընդ նմա, տուժելով տուժեսցի ։ 15 * Ապա թէ տէր նորա ընդ նմա իցէ, ոչ տուժեսցի ։ ապա եթէ 'ի վարձու առեալ իցէ, ընդ վարձուց

16 իւրոց եղիցի նմա ։ * ‖ Իսկ եթէ ոք խաբեսցէ զկոյս խօսեցեալ՝ և ննջեսցէ ընդ նմա, վարձանօք վարձեսցէ զնա իւր 17 կնութեան ։ * Եթէ ոչ առնուցու յանձն հայր նորա տալ զնա նմա կնութեան, տուժեսցի արծաթ հօր նորա՝ որպէս 18 իցեն վարձանք կուսից ։ * Զկախարդս 19 մի ապրեցուցանիցէք ։ * Զամենայն որ խառնակիցի ընդ անասուն, մահու 20 սպանանիջիք ։ * ‖ Որ դից զոհիցէ՝ սատակեսցի, բայց միայն տեառն ։ 21 * Զպանդուխտն մի չարչարիցէք՝ և մի նեղիցէք զնա. զի և դուք պանդուխտք էիք յերկրին Եգիպտացւոց ։ 22 * ‖ Զա͞մ զայրի՝ և զորբ մի չարչարի- 23 ցէք ։ * Ապա եթէ չարչարելով չարչարիցէք զնոսա, և բողոք բարձեալ աղաղակիցեն առ իս, լսելով լուայց 24 աղաղակի նոցա ։ * Եւ բարկացայց սրտմտութբ՝ և կոտորեցից զձեզ սրով. և եղիցին կանայք ձեր այրիք. և մանկունք ձեր որբք ։ 25 * Եւ եթէ արծաթ փոխ տայցես եղբօր քում, որ աղքատ իցէ և բնակեսցի առ քեզ՝ մի ճեպեսցես զնա. և մի արկանիցես նմա տո- 26 կոս ։ * Եւ ‖ եթէ գրաւեսցես զբաճկոն ընկերի քոյ, նախ քան զմտանել 27 արևու դարձուսցես անդրէն ։ * Զի այն է վերարկու նր. և այն է հանդերձ առականաց նորա որով ննջիցէ ։ և եթէ բողոքիցէ առ իս՝ լուայց նմա. 28 քանզի ողորմած եմ ։ * Զաստուածս քո մի բամբասիցես ։ ‖ և զիշխան ժողովրդեան քոյ մի հայհոյեսցես ։ 29 * Զպտուղ կալոյ և հնձանի մի հատանիցես ։ ‖ զանդրանիկս որդւոց քոց 30 ինձ տացես ։ * Նոյնպէս արասցես զարջառն քո. և զոչխարն քո. և զէշն քո ։ զեօթն օր եղիցի ընդ մաւր իւրում. և յաւուրն ութերորդի տացես 31 զնա ինձ ։ * Եւ մարդք սուրբ լինիցիք ինձ. ‖ և զմիս գազանաբեկին 'ի բացէ մի ուտիցէք. այլ շան ընկեսջիք ։

ԳԼ ։ ԻԳ.

1 Եւ զհամբաւ սուտ մի ընդունիցիս ։ մի հաւանիցիս ընդ անի- 2 րաւի՝ լինել վկայ անիրաւ ։ * Մի՛ յօժարեսցիս ընդ բազումս 'ի չարիս. մի յաւելցիս 'ի բազմութիւն մտանել ընդ բազումս առ 'ի խոտորելոյ զիրաւունս ։ 3 * Եւ մի ողորմեսցիս տնանկին 'ի դա- 4 տաստանի ։ * ‖ Եւ եթէ պատահեսցիս եզին թշնամւոյ քոյ՝ կամ իշոյ նր մոլորելոյ, դարձուսցես, և հասուսցես 5 զնա առ նա ։ * Եւ եթէ տեսանիցես զգրաստ ընկերի քոյ անկեալ ընդ բեռամբ՝ մի զանց առնիցես զնովաւ, այլ

‖2 Թագ. 12.6.
‖Ծննդ. 31.39.
‖2. Օր. 22.28.
‖Ղև. 19.4.
‖Զաք. 7.10.
‖2. Օր. 24.13.
‖Գործ. 23.5.
‖Ել. 13.2. և 12.
‖Ել. 34.19.
Եզեկ. 44.30.
‖Ղև. 22.8.
‖2. Օր. 22.1.

6 այլ յարուեսցես զնա ընդ նմա։ *Մի խոտորեսցես զիրաւունս տնանկի ՚ի դատաստանի իւրում։ 7 *Յամենայն ՚ի զուր բանէ ՚ի բաց լինիցիս. և զանպարտն՝ և զարդարն՝ մի սպանանիցես. և զամպարիշտն մի արդարացուցանիցես վ̄ն կաշառի։ 8 *‖Եւ կաշառ մի առնուցուս. զի կաշառ կուրացուցանէ զաչս համարձակահայեցաց. և ապականէ զբանս արդարս։ 9 *Եւ զպանդուխտն մի նեղիցես. քանզի ճանաչէք դուք զանձինս պանդխտաց. զի և դուք ‖պանդուխտք էիք յերկրին Եգիպտացւոց։ 10 *Զվեց ամ սերմանեսցես զերկիր քո. և ժողովեսցես զարմտիս նր։ 11 *Եւ յամին եօթներորդի թողութի արասցես. և հանգուսցես զնա. և կերիցեն տնանկք ազգի քոյ՝ և զմնացեալն ՚ի նոցանէ կերիցեն գազանք վայրի. այնպէս արասցես զայգին քո՝ և զձիթենին քո։ 12 *Զվեց օր գործեսցես զգործ քո. և յաւուրն եօթներորդի հանգիցէ եզն քո՝ և էշ քո. և հանգիցէ որդի աղախնոյ քոյ՝ և պանդխտին։ 13 *Զամենայն զոր ասացի ձեզ՝ պահեսջիք. և զանուն աստուծոց օտարաց մի յիշիցէք. և մի լուիցի ՚ի բերանոյ ձերմէ։ 14 *Երիս ժամանակս ՚ի տարւոջ արասջիք ինձ տօնս։ 15 *Զտօն բաղարջակերացն պահեսջիք. զեօթն օր բաղարջ կերիջիք. ‖որպէս պատուիրեցի ձեզ ըստ ժամանակի ամսոյն նորոց. զի ՚ի նմին ելէք դուք յերկրէն Եգիպտացւոց. ‖ոչ երևեսցիս առաջի իմ դատարկաձեռն։ 16 *Եւ զտօն ամառնային առաջնոյ արմտեաց քոց արասցես. զգործոց քոց, որ ինչ վարեալ իցէ յանդի քում։ և զտօն կատարածի ելից տարւոյն. ՚ի ժողովել գործոց քոց յանդէ։ 17 *‖Երիս ժամանակս ՚ի տարւոջ յանդիման լիցի ա̄մ արու քո առաջի Տն̄ Ա̄Յ։ 18 *Եւ մի զոհիցես ՚ի վ̄ն խմորոյ զարիւն զոհից քոց. և մի ագցի ճարպ տօնի իմոյ մինչև ցառաւօտ։ 19 *‖Զպտուղս առաջինս արմտեաց քոց բերցես ՚ի տուն Տն̄ Ա̄Յ քոյ. ‖և մի եփեսցես զգառն ՚ի կաթն մօր իւրոյ։ 20 *Եւ ահա ես առաքեմ զհրեշտակ իմ առաջի երեսաց քոց. զի պահեսցէ զքեզ ՚ի ճանապարհի. որպէս զի տարցի զքեզ յերկիրն, զոր պատրաստեցի քեզ։ 21 *Զգոյշ լեր անձին քում և լուիցես նմա. և մի անհաւան լինիցիս նմա. զի ոչ խորշեսցի ՚ի քէն. քանզի անուն իմ ՚ի վերայ նր է։ 22 *‖Եւ եթէ լսելով լուիցես ձայնի իմում, և արասցես զամենայն, զոր ինչ ասացի քեզ՝ եղէց թշնամի թշնամեաց քոց. և հակառակ

‖Պամ. 5.17. 2. Օրէ. 16.19. Մեր. 20.31. ‖Ծննդ. 46.6. ‖Ել. 13.3. Անդ. 34.22. 2. Օրէ. 16.16. ‖Մեր. 35.6. ‖Անդ. 34.23. 2. Օրէ. 16.16. ‖Անդ. 34.26. ‖2. Օրէ. 14.21. և 22. ‖2. Օրէ. 7.11.

23 կացից հակառակորդաց քոց։ *Զի ‖երթիցէ հրեշտակ իմ առաջնորդ քեզ. և տարցի զքեզ առ ամորհացին. և քետացին. և փերեզացին. և քանանացին և գերգեսացին. և խևացին՝ և յեբուսացին. և սատակեցից զն̄ն։ 24 *Մի պագանիցես երկիր աստուծոց նոցա. և մի պաշտեսցես զնոսա. և մի առնիցես ըստ գործոց նոցա. այլ քակելով քակեսցես զնոսա. և մանրելով մանրեսցես զարձանս նոցա։ 25 *Եւ պաշտեսցես զՏր̄ Ա̄ծ քո. և օրհնեցից զհաց քո. և զջուր քո. և դարձուցից ՚ի ձէնջ զախտ։ 26 *Եւ մի եղիցի անսերմն և ամուլ յերկրի քում. զթիւ աւուրց քոց լցուցից։ 27 *Եւ զահ իմ առաքեցից առաջնորդել քեզ. և զարհուրեցուցից զա̄մ ազգս, յոր մտանիցես ՚ի նոսա. և տաց զա̄մ հակառակորդս քո փախստականս։ 28 *‖Եւ առաքեցից առաջի քո զպիծակ. և մերժեսցէ զամորհացիս. և զխևացիս. և զքանանացիս. և զքետացիս ՚ի քէն։ 29 *Եւ ոչ մերժեցից զնոսա յերեսաց քոց՝ ՚ի միում ամի. զի մի երկիրն անապատ լինիցի. և բազմանայցեն ՚ի վերայ քո գազանք երկրին։ 30 *Առ սակաւ սակաւ մերժեցից զնոսա ՚ի քէն. մինչև աճեսցիս և ժառանգեսցես զերկիրն։ 31 *Եւ եդից զսահմանս քո ՚ի կարմիր ծովէ, մինչև ՚ի ծովն փղշտացւոց. և յանապատէն՝ մինչև ՚ի գետն մեծ Եփրատ։ և մատնեցից ՚ի ձեռս ձեր զբնակիչս երկրին. և մերժեցից զն̄ն ՚ի քէն։ 32 *‖Եւ մի դնիցես ընդ ն̄ն, և ընդ դիս ն̄ց ուխտ։ 33 *Եւ մի բնակեսցեն յերկրի քում. զի մի յանցուցանիցեն զքեզ առ իս. զի եթէ ծառայեսցես դիցն ն̄ց, նոքին լինիցին քեզ ՚ի գայթագղութի։

‖Անդ. 33.2. Յեսու. 24.11. 2. Օրէ. 7.22. ‖2. Օրէ. 7.20. ‖2. Օրէ. 7.2. Անդ. 34.15.

## ԳԼ։ ԻԴ։

1 Եւ ասէ ցՄովսէս. Ել առ Տր̄. դու և Ահարոն՝ և Նադաբ՝ և Աբիուդ. և եօթանասուն այր ՚ի ծերոցն իսրայէլի. և երկիրպագցեն Տն̄ ՚ի հեռաստանէ։ 2 *Եւ մերձեսցի Մովսէս միայն առ Ա̄ծ. և նոքա մի մերձեսցին. բայց ժողովուրդն մի ելցէ ընդ նոսա։ 3 *Եւ եմուտ Մովսէս՝ և պատմեաց ժողովրդեանն զամենայն պատգամս Ա̄Յ՝ և զա̄մ զիրաւունս. պատասխանի ետ ա̄մ ժողովուրդն ՚ի մի ձայն՝ և ասէին. զա̄մ զպատգամս՝ զոր խօսեցաւ Տր̄՝ արասցուք, և լուիցուք։ 4 *Եւ գրեաց Մովսէս զամենայն զպատգամսն Տն̄. և կանխեալ Մովսէսի ընդ առաւօտն. շինեաց սեղան ՚ի ստորոտ լերինն. և երկոտասան վէմս կանգնեաց.

նեաց. ըստ երկոտասան ազգացն իս_
րայէլի ։ * Եւ առաքեաց զերիտա_ 5
սարդս որդւոցն իսրայէլի՝ և հանին
ողջակէզս. և զոհեցին զոհս փրկու_
թեան Տն, որթս ։ * Եւ առեալ մովսէսի 6
զկէս արեանն եարկ 'ի խառնելիս. և
զկէս արեանն եհեղ առաջի սեղա_
նոյն ։ * Եւ առեալ զգիր ուխտին ըն 7
թերցաւ յականջս ժողովրդեանն ։ և
ասեն՝ զամ զոր խօսեցաւ Տր՝ արաս_
ցուք, և լուիցուք ։ * Եւ առեալ մովսէսի 8
զարիւնն՝ ցանեաց զժողովրդեամբն՝
և ասէ. ահա ‖ այս արիւն է ուխտին՝
զոր ուխտեաց Տէր ընդ ձեզ. վասն
ամ բանիցս այսոցիկ ։ * Եւ ելին մո_ 9
սէս՝ և ահարոն՝ և նադաբ. և աբիուդ.
և եօթանասունք 'ի ծերոցն իսրայէլի ։
* Եւ տեսին զտեղին՝ ուր կայր Այ 10
իսրայէլի. և ընդ ոտիւք նորա իբրև
զգործած աղիւսոյ շափիւղայի իբրև
զտեսիլ հաստատութեան երկնից սր_
բութեան ։ * Եւ յընտրելոց իսրայէլի ոչ 11
ծախեցաւ՝ և ոչ մի. և երևեցան 'ի
տեղւոջն Այ. և կերին՝ և արբին ։
* Եւ ասէ Տր ցմովսէս. ել առ իս 'ի 12
լեառնն. և անդ լինիջիր ։ և տաց քեզ
տախտակս քարեղէնս՝ և օրէնս՝ և պա
տուիրանս, զորս գրեցի. լինել նոցա
օրէնսդիր ։ * Յարեաւ մովսէս՝ և յեսու 13
պաշտօնեայ նորա. և ելին 'ի լեառնն
Այ ։ * Եւ ասէ ցծերսն. դադարեցէք 14
այդր՝ մինչև դարձցուք առ ձեզ ։ և
ահա ահարոն և ովր ընդ ձեզ են ։ և
եթէ ուրուք դատաստան ինչ լինիցի,
երթիցեն առ նոսա ։ * Եւ ել մովսէս 15
'ի լեառն. և ծածկեաց ամպն զլեառն ։
* Եւ իջին փառքն Այ 'ի լեառն սի_ 16
նայ. և ծածկեաց զնա ամպն՝ զվեց
օր. և կոչեաց Տէր զմովսէս յաւուրն
եօթներորդի 'ի միջոյ ամպոյն ։ * Եւ 17
տեսիլ փառացն Տն իբրև զհուր բոր
բոքեալ 'ի վերայ գլխոյ լերինն՝ յան_
դիման որդւոցն իսրայէլի ։ * Եւ ե_ 18
մուտ մովսէս 'ի մէջ ամպոյն՝ և ել 'ի
լեառն. և էր մովսէս 'ի լերին անդ զքա
ռասուն տիւ և զքառասուն գիշեր ։

‖ Եբրա. 9.20.

## ԳԼ: ԻԵ:

Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի, և 1
ասէ ։ * Խօսեաց ցորդիսն իս_ 2
րայէլի. առէք ինձ պտուղ ‖ 'ի նոցա_
նէ՝ որոց հաճոյ թուեսցի 'ի սրտս
իւրեանց ։ * Եւ այս է պտուղն՝ զոր 3
առնուցուք 'ի նոցանէ. ոսկի. և ար_
ծաթ. և պղինձ ։ * Եւ կապուտակ՝ և 4
ծիրանի. և կարմիր կրկին. և բեհեզ
մանեալ. և մազ այծեաց ։ * Եւ մորթս 5
խոյոց կարմիր ներկեալ. և մորթս կա
պուտակեալս. և փայտս անփուտս ։
6 * Եւ եւղ լուսոյ. և խունկս յիւղ օծ_
ման. և 'ի հանդերձանս խնկոց ։
7 * Եւ ականս սարդիոնս. և ականս
գրոյ՝ 'ի գործ վակասին. և զպճղնա_
8 ւորն ։ * Եւ արասցես ինձ սրբութի.
9 և երևեցայց 'ի ձեզ ։ * ‖ Եւ արաս_
ցես ինձ ըստ ամենայնի, զոր ցուցից
քեզ 'ի լերին. օրինակ խորանին՝ և
օրինակ ամենայն սպասուց նորա ։

‖ Ելից. 35.5.

‖ Եբրայ. 9.5.



10 * Եւ այսպէս արասցես. արասցես տա
պանակ վկայութեան՝ յանփուտ փայտից ։
յերկուց կանգնոց և 'ի կիսոյ զերկայ_
նութի նորա՝ և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ
զլայնութի նր. և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ
11 զբարձրութի նորա ։ * Եւ պատեսցես
զնա ոսկւով սրբով՝ ներքոյ և ար_
տաքոյ օծցես զնա ։ և արասցես նմա
ծնօտս ոսկիս շուրջ շրջանակաւ ։
12 * Եւ ձուլեսցես նմա չորս օղամա_
նեակս ոսկիս. և դիցես 'ի չորեցունց
կողմանց նր. երկուս օղամանեակս 'ի
միոջէ կողմանէ. և երկուս օղամա_
13 նեակս 'ի միւսմէ կողմանէ ։ * Եւ ա_
րասցես լծակս յանփուտ փայտից. և
14 պատեսցես զնոսա ոսկւով ։ * Եւ ա_
գուցես զլծակսն յօղամանեակսն 'ի
կողմանս տապանակին. բառնալ նո_
15 քօք զտապանակն ։ * Օ 'ի յօղամանեակս
տապանակի կտակարանաց՝ կայցեն
լծակքն անշարժք անդստին 'ի նմանէ ։
16 * Եւ դիցես 'ի տապանակին զվկայու
թիւնս

թ՛ նման զոր ես տաց քեզ ։ 17 * Եւ արասցես զքաւութիւնն խնկական յոսկւոյ սրբոյ ։ յերկուց կանգնոց և ՚ի կիսոյ երկայնութիւն նորա ․ և ՚ի կանգնոյ և ՚ի կիսոյ լայնութիւն նր ։ 18 * Եւ արասցես երկուս քրոբէս ոսկիս ձախարակեայս ։ և դիցես զնոսա ՚ի վերայ երկոցունց կողմանց քաւութեանն ։ 19 * Եւ լինիցին քրոբէքն մի ՚ի միջէ կողմանէ, և մի ՚ի միւսմէ կողմանէ քաւութեանն ։ 20 * Եւ արասցես երկուս քրոբէս ՚ի վր երկոցունց կողմանց նր ․ և իցեն քրոբէիցն տարածեալ զթևս իւրեանց ՚ի վերուստ․ և հովանի ունիցին թևօք իւրեանց ՚ի վերայ քաւութեանն ․ և երեսք նոցա յանդիման միմեանց ․ զի ՚ի քաւութիւն հայիցին երեսք քրոբէիցն ։ և դիցես զքաւութիւն ՚ի վերայ տապանակին ․ ՚ի վերուստ կողմանէ ։ 21 * Եւ դիցես ՚ի տապանակի անդ զվկայութիւն զոր ես տաց քեզ ։ 22 * Եւ յայտնեցայց քեզ անտի ։ և խօսեցայց ընդ քեզ ՚ի վերուստ ՚ի քաւութենէ անտի ․ ՚ի միջոյ երկուց քրոբէից որք իցեն ՚ի վերայ տապանակին վկայութեան ․ ըստ ամի զոր պատուիրեցից քեզ առ որդիսն իղի ։

23 * Եւ արասցես սեղան յանփուտ փայտից ․ յերկուց կանգնոց զերկայնութիւն նորա․ և ՚ի կանգնոյ զլայնութիւն նր ։ և ՚ի կանգնոյ և ՚ի կիսոյ զբարձրութիւն նորա ։ 24 * Եւ պատեսցես զնա ոսկւով սրբով․ և արասցես նմա ծնօտս ոսկիս շրջանակաւ շուրջանակի ։ 25 * Եւ արասցես նմա պսակ ուղկէն շուրջանակի ։ և արասցես պսակին ծնօտս շրջանակաւ շուրջանակի ։ 26 * Եւ արասցես նմա չորս օղամանեակս ոսկիս ․ և դիցես զօղամանեակսն ՚ի չորեսին կողմանսն՝ որք իցեն չորեցունց ոտից նր ։ 27 * ՚Ի ներքոյ պսակին եղիցին օղամանեակքն լամբք լծակացն ․ բառնալ նոքօք զսեղանն ։ 28 * Եւ արասցես լծակսն յանփուտ փայտից ․ և պատեսցես զնոսա ոսկւով սրբով ․ և բարձցի նոքօք սեղանն ։ 29 * Եւ արասցես զխնկաղացս և զտուփս նորա՝ և զձաշակս՝ և զնուիրանոցս նորա․ որովք նուիրեսցես ։ ՚ի յոսկւոյ սրբոյ արասցես զայն ։ 30 * Եւ դիցես ՚ի վերայ սեղանոյ հացին երեսաց յանդիման իմ հանապազորդ ։

31 * Եւ արասցես աշտանակ յոսկւոյ սրբոյ ․ ձախարակեայ գործեսցես զաշտանակն ․ զի բունն և ստեղունքն ․ և սկահքն և գնդակքն՝ և շուշանքն՝ անդստին ՚ի նմանէ իցեն ։ 32 * Վեց ստեղունք արձակեալք ՚ի կողմանց նորա ։ երեք ստեղունք աշտանակին ՚ի միջէ կողմանէ ․ և երեք ստեղունք աշտանակին ՚ի միւսմէ կողմանէ ։ 33 * Եւ երեք սկահաձևք ընդունղաղարդք յօրինեալք ՚ի միում ստեղանն ․ և գնդակ և շուշան ․ և երեք սկահաձևք ընդունղաղարդք յօրինեալք ՚ի միում ստեղան ․ և գնդակ և շուշան ․ նոյնպէս վեցեցունց ստեղանց արձակելոյ յաշտանակէ անտի ։ 34 * Եւ յաշտանակի անդ չորք սկահաձևք ընդունղաղարդք յարդարեալք ․ և գնդակք և շուշանք նր ։ 35 * Գնդակ ՚ի ներքոյ երկուց ստեղանցն անդստին ՚ի նմանէ ․ և գնդակ ՚ի ներքոյ երկուց ևս ստեղանցն անդստին ՚ի նմանէ ․ նոյնպէս արասցես վեցեցունց ստեղանցն արձակելոց յաշտանակէ անտի ։ 36 * Զի գնդակք նց և ստեղունք անդստին ՚ի նմանէ իցեն ․ համակ ձախարակեայ, ՚ի միոջէ յոսկւոյ սրբոյ ։ 37 * Եւ արասցես նմա ճրագարանս եօթն ։ և դիցես զճրագարանսն ՚ի վերայ աշտանակին ․ և տացեն լոյս ՚ի միոջէ կողմանէ երեսաց նորա ։ 38 * Եւ զբազմակալս նորա ․ և զնեցուկս արասցես յոսկւոյ սրբոյ ։ 39 * ՚Ի տաղանդէ միոյ ոսկւոյ սրբոյ արասցես զայն ամ սպաս ։ 40 * ‖ Զգոյշ լեր որպէս ցուցաւ քեզ օրինակ ՚ի լերինն՝ արասցես ։

‖ Եբրայ․ 8․5․ Գործ․ 7․44․



## ԳԼ ։ ԻԶ ։

1 Եւ արասցես խորան տասն փեղկեան ։ ՚ի բեհեզոյ մանելոյ՝ և ՚ի կա_

կապուտակէ. և ՚ի ծիրանւոյ՝ և ՚ի կարմրոյ կրկնելոյ. քերովբէ գործ անկուածոյ գործեսցես զնոսա։ 2 *Երկայնութի միոյ փեղկի՝ ՚ի քսան և ութ կանգնոյ. և լայնութի ՚ի չորից կանգնոց՝ փեղկի միոյ լինիցի. չափ նոյն եղիցի ամենայն փեղկացն։ 3 *Հինգ փեղկ ընդ միմեանս կցեալ. և հինգ ևս այլ ընդ միմեանս խառնեալ։ 4 *Եւ արասցես ձարմանդս կապուտակեայս առ եզերբ միոյ փեղկին ՚ի միոջէ կողմանէ՝ ՚ի խառնուածս։ նոյնպէս արասցես և առ եզերբ արտաքնոյ փեղկին. երկրորդի խառնուածոյն։ 5 *Յիսուն ձարմանդ արասցես միում փեղկի. և յիսուն ձարմանդ արասցես ՚ի կողմանէ փեղկին. ըստ երկրորդի խառնուածոյն. դէմ ընդդէմ միմեանց իւրաքանչիւր խառնիցին ձարմանդքն։ 6 *Եւ արասցես յիսուն աղխս ոսկիս՝ և խառնեսցես զփեղկսն ընդ միմեանս աղխիւքն. և եղիցի խորան մի։ 7 *Եւ արասցես վերնափեղկս մազեղէնս՝ նոհարտան խորանին. մետասան փեղկ գործեսցես զնոսա։ 8 *Երկայնութի միոյ փեղկին լինիցի յերեսուն կանգնոյ. և լայնուն միոյ փեղկի ՚ի չորից կանգնոց. չափ նոյն եղիցի մետասանեցունց փեղկացն։ 9 *Եւ խառնեսցես ընդ միմեանս զհինգ փեղկսն ՚ի միասին. և զվեց փեղկսն ՚ի միասին։ և կրկնեսցես զվեցերորդ փեղկն առաջոյ կողմանէ խորանին։ 10 *Եւ արասցես ձարմանդս յիսուն առ եզերբ միոյ փեղկին. ՚ի մէջ խառնուածոյն. և յիսուն ձարմանդ արասցես առ եզերբ փեղկին երկրորդի խառնուածոյն։ 11 *Եւ արասցես օղս պղնձիս յիսուն. և խառնեսցես զօղսն ընդ ձարմանդսն. և կցեսցես զփեղկսն՝ և եղիցի մի։ 12 *Եւ դիցես զաւելորդ փեղկիցն ՚ի ներքոյ խորանին. կիսով փեղկին աւելորդաւ մնացելով ծածկեսցես զապարումն փեղկից խորանին յետոյ կողմանէ։ 13 *Կանգնաւ յայսմ կողմանէ, և կանգնաւ յայնմ կողմանէ, յաւելորդէ երկայնութե փեղկից խորանին. և եղիցի ծածկել զապարումն խորանին աստի և անտի։ 14 *Եւ արասցես զվերմակս խորանին ՚ի շիկակարմիր մորթոյ խոյոց. և ծածկելիս ՚ի կապուտակ մորթոյ ՚ի վերուստ։ 15 *Եւ արասցես զսիւնակս խորանին յանփուտ փայտից։ 16 *Կանգնաւորս. ՚ի տասն կանգնոյ զերկայնութի միոյ սիւնակին առնիցես. և ՚ի միոջէ կանգնոյ և ՚ի կիսոյ։ 17 *Եւ զթանձրութիւնն՝ և զլայնութի միոյ սիւնակին. և երկուս սիւռիչս միում սիւնակի, ադուցեալ ընդ միմեանս. այնպէս արասցես ամենայն սիւնակաց խորանին։ 18 *Եւ արասցես քսան սիւնակս խորանին ՚ի հիւսիսոյ կողմանէ։ (՚ի հարաւոյ.) 19 *Եւ քառասուն խարիսխս արծաթիս արասցես քսանեցունց սեանցն. երկու խարիսխք առ մի սիւն յերկոցունց կողմանց. և երկու խարիսխք առ մի սիւն յերկոցունց կողմանց խորանին։ 20 *Եւ յերկրորդէ կողմանէ խորանին ընդ հարաւ քսան սիւն։ (հիւսիս.) 21 *Եւ քառասուն խարիսխք նց արծաթիք. երկու խարիսխք առ մի սիւն յերկոցունց կողմանց։ 22 *Եւ յետուստ խորանին ՚ի ծովակողմն կուսէ արասցես վեց սիւն։ 23 *Երկուս սիւնս արասցես յանկիւնս խորանին ՚ի թիկանց կողմանց։ 24 *(Եւ յետուստ խորանին ՚ի ծովակողմն կուսէ արասցես վեց սիւնս. երկուս սիւնս արասցես յանկիւնս խորանին ՚ի թիկանց կողմանէ) և եղիցին հաւասարակ ՚ի ներքուստ. և ըստ նմին օրինակի լինիցին զոյգ ՚ի խոյակացն նորա ՚ի մի խառնուած։ նոյնպէս արասցես երկոցունց անկեանցն կանգնաւորս։ 25 *Եւ եղիցին ութ սիւնք. և խարիսխք նց արծաթիք. վեշտասան խարիսխ. երկու խարիսխ առ մի սիւն յերկոցունց կողմանց նորա. և երկու խարիսխք առ միւս սիւն։ 26 *Եւ արասցես նիգս յանփուտ փայտից. հինգ նիգ առ մի սիւն 27 ՚ի միոջէ կողմանէ խորանին։ *Եւ հինգ նիգ առ մի սիւն յերկրորդ կողմանէ խորանին. և հինգ նիգ առ մի սիւն ՚ի թիկանց խորանին ընդ ծովակողմն։ 28 *Եւ նիգ մի ՚ի մէջ սեանցն թափանցաց՝ ՚ի միոջէ ՚ի միւս կողմն։ 29 *Եւ զսիւնսն պատեսցես ոսկւով. և արասցես օղս ոսկիս. յորս ադուցանիցեն զնիգսն. և պատեսցեն զնիգսն ոսկւով։ 30 *Եւ կանգնեսցես զխորանն ըստ օրինակին ‖ որ ցուցաւ քեզ ՚ի լերին անդ։ (‖ Ներ. 25.40.) 31 *Եւ արասցես վարագոյր ՚ի կապուտակէ՝ և ՚ի ծիրանւոյ. և ՚ի կարմրոյ մանելոյ. և ՚ի բեհեզոյ նիւթելոյ. գործ անկուածոյ գործեսցես զնա քերովբէ։ 32 *Եւ դիցես զնա ՚ի վր չորեցունց սեանցն անփուտ և ոսկեպատաց. և խոյակք նոցա ոսկիք. և խարիսխք նց արծաթիք։ 33 *Եւ ձգեսցես զվարագոյրն ՚ի սեանէ ՚ի սիւն. և տարցես ՚ի ներքս քան զվարագոյրն զտապանակ վկայութեն. և անջրպետեսցէ ձեզ վարագոյրն ՚ի մէջ սրբութեն. և ՚ի մէջ սրբութեան սրբութեցն։ 34 *Եւ ծածկեսցես վարագուրաւն զտապանակ վկայութեանն. ՚ի

սրբու-

սրբութն սրբութեացն ։ * Եւ դիցես 35
զսեղան արտաքոյ վարագուրին ։ և
զաշտանակն յանդիման սեղանոյն ,'ի
կողմանէ խորանին ընդ հարաւ ․ և
զսեղանն դիցես 'ի կողմանէ խորանին
ընդ հիւսիս ։ * Եւ արասցես սրահակ 36
դրան խորանին ։ 'ի կապուտակէ՝ և 'ի
ծիրանւոյ ․ և 'ի կարմրոյ մանելոյ ․ և
'ի բեհեզոյ նիւթելոյ՝ գործ նկարա_
կերպ ։ * Եւ արասցես վարագուրին 37
հինգ սիւնակ յանփուտ փայտէ՝ ․ և
օծցես զնոսա ոսկւով ։ և խոյակք նո_
ցա ոսկիք ․ և ձուլեսցես նոցա հինգ
խարիսխս պղնձի ։



ԳԼ: ԻԷ։

‖ Աշխ․ 38.1.

Եւ ‖ արասցես սեղան յանփուտ 1
փայտից ։'ի հինգ կանգնոյ զեր_
կայնութիւն ․ և 'ի հինգ կանգնոյ զլայ
նութիւն ։ չորեքկուսի լինիցի սեղանն ։
և յերից կանգնոց զբարձրութիւն նր ։
* Եւ արասցես զեղջիւրս նր 'ի վե_ 2
րայ չորեցունց անկեանց իւրոց ․ զի
անդստին ընտրեալ իցեն եղջիւրքն ։
և պատեսցես զնոսա պղնձով ։ * Եւ 3
արասցես պսակ սեղանոյն ․ և զնոնար
տամն նր ։ և զաշտան ։ և զմսահանսն՝
և զկրակարանսն՝ և զամ սպասսն [ա_
րասցես պղնձի ։ * Եւ արասցես նմա 4
դահաւորակ վանդակակերպ պղնձի ։
և արասցես դահաւորակին չորս օղա_
մանեակս պղնձիս ․ 'ի չորեցունց կող_

5 մանէ ։ * Եւ դիցես զնոսա ընդ գա_
հաւորակաւ սեղանոյն 'ի ներքոյ ․ և
եղիցի դահաւորակն մինչև 'ի մէջս
6 սեղանոյն ։ * Եւ արասցես զլծակս
սեղանոյն ․ լծակս յանփուտ փայտից
7 և պատեսցես զնոսա պղնձով ։ * Եւ
արկցես զլծակսն ընդ օղսն ։ և եղի_
ցին լծակքն յերկոցունց կողմանց սե
8 ղանոյն՝ առ 'ի բառնալ զնա ։ * ‖ Խոր ‖ Ել․ 20. 24.
տախտակամած արասցես զնա ․ ըստ
օրինակին որպէս ցուցաւ քեզ 'ի լե_
րին անդ ․ այնպէս արասցես զնա ։
9 * Եւ արասցես սրահ խորանին 'ի
կողմն հարաւոյ ․ և զառագաստ սրա_
հին 'ի բեհեզոյ մանելոյ ․ հարիւր կան
գուն յերկայնութիւն միոյ կողմանն ։
10 * Եւ սիւնք նոցա քսան ․ և խարիսխք
նոցա պղնձիք քսան ․ և օղք նոցա , և
11 խոյակք նց արծաթիք ։ * Նոյնպէս
և 'ի կողմանն՝ որ ընդ հիւսիսոյ՝ առա
գաստքն հարիւր կանգուն յերկայ_
նութիւն ․ և սիւնք նոցա պղնձիք քսան ․
և խարիսխք նոցա պղնձիք քսան ․ և
խոյակք նոցա ․ և խարիսխք սեանցն ․
և խարիսխք պատեալք արծաթով ։
12 * Եւ 'ի լայնութիւն սրահին ընդ ծովա
կողմն առագաստք 'ի յիսուն կանգնոյ ․
սիւնք նոցա տասն ․ և խարիսխք նոցա
13 տասն ։ * Նոյնով լայնութեամբ սրահին ․
որ հայի ընդ արևելս՝ յիսուն կանգնոյ
14 եղիցին ։ * Եւ 'ի հնգետասան կանգ_
նոյ բարձրութիւն առագաստից 'ի միո_
ջէ կողմանէ ․ սիւնք նց երեք ․ և խա_
15 րիսխք նց երեք ։ * Եւ յերկրորդում
կողմանն՝ հնգետասան կանգուն ա_
ռագաստիցն 'ի բարձրութիւն ․ սիւնք
նոցա երեք ․ խարիսխք նոցա երեք ։
16 * Եւ դրան սրահին վարագոյրք՝ քսան
կանգուն 'ի բարձրութիւն ․ 'ի կապու_
տակէ ․ և 'ի ծիրանւոյ ։ և 'ի կարմրոյ
մանելոյ ․ և 'ի բեհեզոյ նիւթելոյ , նկա
րէն յասղանագործաց ։ և սիւնք նոցա
չորք ․ և խարիսխք նոցա չորք ։
17 * Ամենայն սիւնք սրահին շուրջանա_
կի արծաթապատք ․ և խոյակք նոցա
արծաթիք ․ և խարիսխք նց պղնձիք ։
18 * Եւ երկայնութիւն սրահին հարիւր
առ հարիւր ․ և լայնութիւն , յիսուն առ
յիսուն ․ և բարձրութիւն հինգ կան_
գուն ․'ի բեհեզոյ մանելոյ ․ և խարիսխք
19 նոցա պղնձիք ։ * Եւ ամ կահ խորա_
նին , և ամ գործի նորա , և ամենայն
20 ցիցք սրահին՝ պղնձիք ։ * Եւ դու
պատուիրեա որդւոցն Իսրայելի ․ և
առցեն քեզ ձէթ նր՝ 'ի ձիթենեաց՝
պարզ՝ խակակութ 'ի լոյս ․ զի եղիցի
21 ճրագ հանապազորդ ։ * 'Ի խորանի
վկայութեան , արտաքոյ վարագուրի
ուխտին ։

ւխտին. և լուսանիցէ զնոսա ահարոն և որդիք նորա յերեկորեայ մինչև յառաւօտ՝ առաջի Տն. օրէն յաւիտենական յազգս ձեր առ 'ի յորդւոցն իսրայելի:



ԳԼ: ԻԸ:

1 Եւ դու մատուսցես առ քեզ զահարոն զեղբայր քո. և զորդիս նորա ընդ նմա՝ յորդւոցն իսրայելի, քահանայանալ ինձ. զահարոն՝ և զնադաբ՝ և զաբիուդ՝ և զեղեազար՝ և զիթամար զորդիս ահարոնի: 2 * Եւ արասցես պատմուճան սբ ահարոնի եղբօր քում. 'ի պատիւ և 'ի փառս: 3 * Եւ դու խօսեսցիս ընդ ամ իմաստունս մտօք. զորս լցուցի հոգւով իմաստութեան: և արասցեն պատմուճան սբ ահարոնի 'ի սրբութիւն. որով քահանայանայցէ ինձ: 4 * Եւ այս օրինակ պատմուճանացն՝ զորս առնիցեն. զպճղնաւորն. և զվակասն զուսոյք և զլանջօք: և զպատմուճանն բեհեզեայ՝ և խոյր՝ և կամար. և արասցեն պատմուճան սուրբ՝ ահարոնի եղբօր քում, և որդւոց նորա՝ քահանայանալ ինձ: 5 * Եւ առցեն նոքա զոսկի՝ և զկապուտակ. և զծիրանի. և զկարմիր մանեալ. և զբեհեզ: 6 * Եւ արասցեն զվակասն յոսկւոյ՝ և 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ նիւթելոյ. գործ ստայնի 7 նկարակերպ: * Երկու վակասք ընդ միմեանս խառնեալք: և եղիցին 'ի վերայ երկոցունց կողմանցն նորա հաստատեալք: 8 * Եւ գործ վակասին՝ որ իցէ 'ի վերայ նորա ըստ նմին օրինակի գործ անդստին 'ի նմանէ լինիցի. յոսկւոյ՝ և 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ նիւթելոյ: 9 * Եւ առցես երկուս ականս զմրուխտս. և գրեսցես 'ի նոսա զանուանս որդւոցն իսրայելի: 10 * Օվեց անուանս նց 'ի միում ական: և զայլն վեց, յերկրորդում ականն: ըստ 11 ազգս իւրեանց: * Գործ ճարտարութե ականագործաց. քանդակ կնքոյ քանդակեսցես զերկոսին ականս ըստ անուանց որդւոցն իսրայելի տպաւորեալս, և քանդակեալս ոսկւով արասցես զնա: 12 * Եւ դիցես զերկուս ակունսն 'ի վերայ ուսոց վակասին. զի լինիցին ակունք յիշատակի որդւոցն իսրայելի: և բառնայցէ ահարոն զանուանս որդւոցն իսրայելի առաջի Տն, 'ի վերայ երկուց ուսոց իւրոց՝ 'ի 13 յիշատակ վասն նց: * Եւ արասցես 14 վահանակս յոսկւոյ սրբոյ: * Եւ արասցես երկուս վերջս յոսկւոյ սրբոյ. մանուածոյս ծաղկեալս՝ գործ հիւսկէն: և դիցես զվերջսն մանուածոյս 'ի վերայ երկուցն վահանակաց:

15 * Ըռ վտաճակօքն նց յառաջոյ կողմանէ. և արասցես զտախտակն դատաստանաց գործ նկարակերպ. ըստ ձևոյ հաստակին արասցես զնա. յոսկւոյ՝ և 'ի կապուտակէ. և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ մանելոյ. և 'ի բեհեզոյ նիւթելոյ: 16 * Եւ արասցես զնա չորեքանկիւնի. թզաւ յերկայնութիւն. և թզաւ 17 'ի լայնութիւն: * Եւ ընդելուզցես 'ի նմա ընդելուզած՝ ըստ չորեքկարգեան ականց: կարգ ականցն առաջին, զմրուխտ՝ և սարդիոն, և տպա- 18 զիոն՝ կարգ մի: * Եւ կարգն երկրորդ՝ կարկեհան՝ և շափիղայ՝ և յաս- 19 պիս: * Եւ կարգն երրորդ գոճազմ՝ 20 ական՝ և սուտակ: * Եւ կարգն չորրորդ՝ յակինթ՝ և բիւրեղ. և եղունգն ընդելուզեալ յոսկի՝ կապեալ յիւրա- 21 քանչիւր կարգս կացցեն: * Եւ եղիցին ակունքն յանուանց որդւոցն իսրայելի երկոտասանք. ըստ անուանցն նոցա. գրեալք քանդակաւ իւրաքանչիւր ըստ անուան իւրում լիցին. ըստ 22 ազգացն երկոտասանից: * Եւ արասցես տախտակ մի հիւսկէն վերջիւք. գործ շղթայագործ յոսկւոյ սրբոյ: 23 * Եւ արասցես 'ի վերայ տախտակին երկուս օղս ոսկիս. և դիցես զերկուս

օղսն

օղսն 'ի վերայ երկուց ծայրից տախ_տակին: 24 *Եւ դիցես զերկուս շղթայս գործս ոսկիս, 'ի վերայ երկուցն օղոց առ ծայրիւք տախտակին: 25 *Եւ զեր_կուս ծայրս երկուց շղթայագործիցն տացես 'ի վերայ երկոցունց մած . և դիցես 'ի վերայ թիկանց վակասին 'ի ճակատ երեսաց նր: 26 *Եւ արասցես երկուս օղս ոսկիս . և տացես զնոսա 'ի վերայ երկուց ծայրից տախտակին. առ եզերբն որ իցէ հանդէպ վակա_սին 'ի ներքոյ կողմանէ: 27 *Եւ արաս_ցես երկուս օղս ոսկիս . և տացես զնս 'ի վերայ երկուց ուսոց վակասին 'ի ներքոյ կողմանէ՝ յանդիման միմեանց միաբան. և զաղխս նորա 'ի վերայ մե_քենայից վակասին: 28 *Եւ պինդ ու_նիցին զտախտակն՝ յօղոց նորա մինչև յօղս վակասին. 'ի նիւթոյ կապուտա_կէ. զի իցէ 'ի վերայ մեքենայից վա_կասին . և մի զերծանիցի տախտակն 'ի վակասէ անտի: 29 *Եւ առցէ ահա_րոն զանուն որդւոցն իսրայէլի 'ի վր տախտակի դատաստանին , 'ի լանջս իւր 'ի մտանել իւրում 'ի սրբութին: 'յիշատակ հանապազորդ առաջի այ: 30 *Եւ դիցես ('ի վր տախտակի դա_տաստանին զվերջսն շղթայագործս, յերկոցունց կողմանց տախտակին դի_ցես: և զերկուս վահանակսն դիցես 'ի վերայ երկուց ուսոց վակասին. յե_րեսաց կողմանէ. 'ի ներքուստ. և դի_ցես) 'ի վերայ տախտակի դատաստա_նին [illegible]անդիմանութին և զճշմարտու_թին . և եղիցի 'ի վերայ լանջացն ահա_րոնի . յորժամ մտանիցէ 'ի սրբութին առաջի Տն : և տարցի ահարոն զդա_տաստանս որդւոցն իսրայէլի 'ի վերայ լանջաց իւրոց առաջի Տն հանապազ: 31 *Եւ արասցես վտաւակս պճղնաւ_որս համակ զկապուտակ: 32 *Եւ զօ_ձիսն գրապանաւ արարեալ բոլորակ ձևեսցես շուրջանակի . գործ ան_կուածոյ: և զխառնուածս անկեալ անդստին 'ի նմանէ. զի մի պատռեսցի: 33 *Եւ արասցես առ ստորոտով վտաւա_կայն 'ի ներքուստ կողմանէ՝ իբրև նռնաձևս ծաղկեալս: 'ի կապուտա_կէ. և 'ի ծիրանւոյ. և 'ի կարմրոյ մա_նելոյ և 'ի բեհեզոյ նիւթելոյ. առ ստո_րոտով վտաւակացն շուրջանակի. և տեսիլ նորա նռնաձև . և զանգակք ոսկիք 'ի մէջ նոցա շուրջանակի : 34 *Զանգակ ոսկի և նռնաձև՝ և ծաղ_կեալ՝ առ ստորոտով վտաւակայն շուր_ջանակի: 35 *‖Եւ եղիցի 'ի վերայ ահա_րոնի, յորժամ պաշտիցէ՝ հնչիւն բար_բառոյ 'ի մտանել իւրում 'ի սրբու_թին առաջի Տն, և յելանել նորա՝ զի մի մեռանիցի: 36 *Եւ արասցես թի_թեղն յոսկւոյ սրբոյ. և քանդակես_ցես 'ի նմա քանդակ կնքոյ՝ սրբութի Տն: 37 *Եւ դիցես զնա 'ի վերայ կա_պուտակին մանելոյ . և եղիցի խոյրին յերեսացն կողմանէ: 38 *'Ի վերայ ճա_կատոյն ահարոնի: և բարձցէ ահարոն զմեղս նուիրացն, որչափ ինչ նուիրի_ցեն որդիքն իսրայէլի. ըստ ամենայն տրոց սրբութեցն իւրեանց. և եղիցի 'ի վերայ ճակատուն ահարոնի հանա_պազ . յընդունելութի նոցա առաջի Տն: 39 *Եւ զպճղնաւոր պատմուճանն 'ի բեհեզոյ: և արասցես ապարօշ բե_հեզեղէն . և կամար՝ գործ նկարա_կերպ: 40 *Եւ որդւոցն ահարոնի արաս_ցես պատմուճանս . և կամարս՝ և խոյրս. 'ի պատիւ և 'ի փառս: 41 *Եւ զգեցուսցես զայն ահարոնի եղբօր քում. և որդւոցն նորա ընդ նմա: և օծցես զնոսա . և լցցես զձեռս նոցա. և սրբեսցես զնս՝ զի քահանայանայ_ցեն ինձ: 42 *Եւ արասցես նց անդրա_վարտիս կտաւիս . ծածկել զառա_կանս մարմնոյ իւրեանց. միջովք չափ և բարձիւք չափ: 43 *Եւ ունիցի զայն ահարոն՝ և որդիք նր . յորժամ մտա_նիցեն 'ի խորանն վկայութե . կամ յորժամ մերձենայցեն 'ի սեղանն սր_բութե պաշտել: և մի ածցեն 'ի վր իւրեանց մեղս՝ զի մի մեռանիցին: օրէն յաւիտենական նմա՝ և զաւակի իւրում յետ նորա:

‖ Սիրաք. 45.11.

## ԳԼ. ԻԹ.

1 Եւ այս ինչ է զոր առնիցես նոցա՝ և սրբեսցես զնոսա քահանայա_նալ նոյա ինձ. ‖ առցես զուարակ մի յանդոյ. և խոյս երկուս անարատս: 2 *Եւ պանս բաղարջս, և շօթս բա_ղարջս շաղեալ իւղով, և քաքարս բաղարջս օծեալ իւղով, նաշիհ ցո_րենոյ արասցես զայն: 3 *Եւ դիցես 'ի վերայ խանի միոյ. և մատուսցես զայն խանիւն. և զզուարակն, և զերկուս խոյսն: 4 *Եւ զահարոն և զորդիս նր մատուսցես 'ի դուռն խորանին վկայ_ութեան. և լուասցես զնոսա ջրով: 5 *Եւ առեալ զպատմուճանս զգե_ցուսցես ահարոնի եղբօր քում. և զպարեգօտս պճղնաւորս 'ի վր ներքն_նակայն. և զվակասն՝ և զտախտակն. և պնտեսցես զտախտակն ը վակասն: 6 *Եւ դիցես զխոյրն 'ի վերայ գլխոյ նր. և դիցես զթիթեղնն զսբ 'ի վերայ խոյրին: 7 *Եւ առցես յիւղոյ անտի օծման, և արկցես 'ի գլուխ նորա. և

‖ Ղևտ. 9. 2.

ածցես զնա ։ * Եւ զորդիս նորա մա_ 8
տուսցես ․ և զգեցուսցես նոցա պատ_
մուճանս՝ և ածցես նոցա կամարս ։
* Ահարօնի և որդւոց նորա ․ և ածցես 9
նոցա սպարոշս ․ և եղիցի նոցա այն
ինձ 'ի քահանայութիւն յաւիտենական ․
և կատարեսցես զձեռս Ահարօնի , և
զձեռս որդւոց նորա ։ * Եւ մատուսցես 10
զզուարակն առ դրան խորանին
վկայութեան ․ և դիցեն Ահարօն՝ և որ_
դիք նորա զձեռս իւրեանց 'ի վերայ
գլխոյ զուարակին առաջի Տն ։ * Եւ 11
սպանցես զզուարակն առաջի Տն առ
դրան խորանին վկայութեան ։ * Եւ 12
առցես յարենէ զուարակին ․ և դիցես
'ի վերայ եղջերաց սեղանոյն մատամբ
քով ․ և զայլն ամենայն արիւն ցանես
ցես առ յատակաւ սեղանոյն ։ * Եւ 13
առցես զամենայն ճարպ թաղանթոյ
քաղրդին ․ և զլերդաբոյթն ․ և զեր_
կուս երիկամունսն ճարպովն դիցես
'ի վերայ սեղանոյն ։ * Եւ զմիս զուա_ 14
րակին և զմորթ նորա և զապաճառն
այրեսցես արտաքոյ բանակին ․ զի այն
իսկ վասն մեղաց է ։ * Եւ զխոյն զմի 15
առցես ․ և դիցեն Ահարօն և որդիք
նորա զձեռս իւրեանց 'ի վերայ գլխոյ
խոյին ։ * Եւ զենցեն զխոյն ․ և առեալ 16
զարիւն նորա հեղցես շուրջ զսեղա_
նովն ։ * Եւ զխոյն յօշեսցես անդամ 17
անդամ ․ և լուասցես զփորոտին՝ և
զոտս նորա ջրով ․ և դիցես 'ի վերայ
յօշոտածոյն ․ համդերձ գլխովն նորա ։
* Եւ հանցես բովանդակ զխոյն 'ի 18
վերայ սեղանոյն ․ ողջակէզ Տն է 'ի
հոտ անուշից ․ զոհ Տն է ։ * Եւ առցես 19
զխոյն երկրորդ ․ և դիցեն Ահարօն
և որդիք նր զձեռս իւրեանց 'ի վերայ
գլխոյ խոյին ։ * Եւ սպանցես զխոյն՝ 20
և առցես յարենէ նր ․ և դիցես 'ի վր
բլթակի աջոյ ունկանն Ահարօնի ․ 'ի
վերայ բլթակի աջոյ ունկան որդւոց
նորա ․ և 'ի վերայ ծայրից ձեռին նր
աջոյ՝ և 'ի վերայ ծայրից աջոյ ոտին
նր՝ և 'ի վերայ աջուց բլթակաց ական
ջաց որդւոցն նր ․ և 'ի վերայ ծայրից
աջոյ ձեռաց նոցա ․ և 'ի վերայ ծայրից
աջոյ ոտից նոցա՝ և հեղցես զարիւնն
շուրջ զսեղանովն ։ * Եւ առցես յարե_ 21
նէն որ 'ի վերայ սեղանոյն իցէ , և յիւ_
ղոյ օծութեան , և ցանեսցես 'ի վերայ
Ահարօնի և 'ի վերայ պատմուճանի
նր ․ և 'ի վերայ որդւոց նր ․ և 'ի վերայ
պատմուճանաց որդւոց նորա ընդ նմա ․
և սրբեսցի ինքն և պատմուճան իւր ․
և որդիք նր ․ և պատմուճանք որդւոց
նր ընդ նմա ․ և զարիւն խոյին ցանես_
ցես շուրջ զսեղանովն ։ * Եւ առցես 22

Ղեւտ. 1.3.
Ղեւտ. 3.3.

'ի խոյէ անտի զճարպն , և զդմակն , և
զճարպ թաղանթ քաղրթին , և զլեր_
դաբոյթն , և զերկուս երիկամունսն
ճարպովլին , և զերին աջոյ ․ զի այն է
23 կատարումն ։ * Եւ պան մի և շօթ մի
իւղով զանգեալ ․ և քաքար մի 'ի խա_
նէ անտի բաղարջից եդելոց առաջի
24 Տն ։ * Եւ դիցես զայն ամենայն 'ի
վերայ ձեռացն Ահարօնի ․ և 'ի վերայ
ձեռաց որդւոց նորա ․ և նուիրեսցես
25 զայն նուէր առաջի Տն ։ * Եւ առցես
'ի ձեռաց նց ․ և հանցես 'ի սեղանն
ողջակիզաց 'ի հոտ անուշից առաջի
26 Տնզի պտուղ Տն է ։ * Եւ առցես զեր_
բուծն 'ի խոյէ անտի կատարման , որ է
Ահարօնի ․ և նուիրեսցես զայն 'ի նուէր
առաջի Տն ․ և եղիցի քեզ 'ի մասն ։
27 * Եւ սրբեսցես զերբուծն 'ի նուէր ․
և զերի նուիրին որ նուիրեսցի ․ և որ
28 ինչ հանիցի 'ի խոյէն , * Կատարման
յԱհարօնէ և յորդւոց նորա ․ և եղիցի
Ահարօնի և որդւոց նորա օրէն յաւի_
տենական առ 'ի յորդւոցն Իսրայէլի ․
զի այն է նց հաւ ․ և եղիցի նուէր յորդ_
ւոցն Իսրայէլի 'ի զենլեաց փրկութեց
29 իւրեանց ․ նուէր նց Տն ։ * Եւ պատ_
մուճանն սրբութե որ է Ահարօնի ,
եղիցի որդւոց նր յետ նորա ․ օծանել
զնս նոքօք ․ և կատարել նոքօք զձեռս
30 նոցա ։ * Զեօթն օր զգենուցու զայն
քահանայն որ փոխանակ նորա կայցէ
յորդւոց իւրոց ․ որ մտանիցէ 'ի խո_
րանն վկայութե պաշտել 'ի սրբու_
31 թիւնս ։ * Եւ զխոյն կատարման առ_
ցես ․ և եփեսցես զմիս նր 'ի սրբում
32 տեղւոջ ։ * Եւ կերիցեն Ահարօն և
որդիք նորա զմիս խոյին ․ և զհացն
որ 'ի խանի անդ՝ առ դրան խորանին
33 վկայութե կերիցեն զնոսա ։ * Զի
լիցի հաճոյական զոհ որովք սրբե_
ցանն՝ կատարել զձեռս նց և սրբել
զնոսա ․ օտարազգի ոք մի կերիցէ 'ի
34 նոցանէ՝ զի սրբութիւնք են ։ * Ապա
թէ մնասցէ 'ի մսոյ զոհին կատարման՝
և 'ի հացէ անտի յայգ՝ այրեսցես զնշ_
խարն հրով ․ և մի կերիցի՝ զի սրբու_
35 թի Տն է ։ * Եւ արասցես Ահարօնի
և որդւոց նր այսպէս ․ ըստ ամենայնի
զոր միանգամ պատուիրեցի քեզ ․
զեօթն օր կատարեսցես զձեռս նոցա
36 * Եւ զզուարակն զվասն մեղաց արաս
ցես յաւուրն սրբութե ․ և մաքրեսցես
զսեղանն , 'ի սրբել քեզ 'ի վերայ նո_
րա ․ և օծցես զնա առ 'ի սրբելոյ զնա ։
37 * Զեօթն օր մաքրեսցես զսեղանն՝ և
սրբեսցես զնա ․ և եղիցի սեղանն նր
սրբոյն ․ ամ որ մերձեսցի 'ի սեղանն
38 սրբեսցի ։ * Եւ այս ինչ իցէ՝ զոր առ_
նի_

Ղեւ. 8.31.
24.9.
Մատ. 12.3.

նիցես 'ի վերայ սեղանոյն : ‖ Երկուս գառինս տարեւորս անարատս՝ առ օր, 'ի վերայ սեղանոյն յաճախութն. զի պտուղ յաճախութեն է:

39 * Զմի գառն առնիցես ընդ առաւօտն. և զերկրորդ գառն առնիցես ընդ երեկոյս:

40 * Եւ տասանորդ նաշհոյ՝ մզեալ իւղով թրմեալ. և զչորրորդ դորակի գինւոյ նուէր առ մի գառն:

41 * Եւ զգառն երկրորդ արասցես՝ ընդ երեկոյս ըստ առաւօտուն զոհին. և ըստ նորին նուէրին առնիցես նմա 'ի հոտ անուշից:

42 * Պտուղ Տն զոհ յաճախութե յազգս ձեր, առ դրան խորանին վկայութե առաջի Տն՝ որով ծանուցայց քեզ անդ խօսել ընդ քեզ:

43 * Եւ ժամանակեցից անդ որդւոցն Իսրայէլի՝ և սրբեսցի սեղանն փառօք իմօք:

44 * Եւ սրբեցից զխորան վկայութեն՝ և զսեղանն. և զԱհարոն՝ և զորդիս նորա սրբեցից ինձ 'ի քահանայութիւն:

45 * Եւ անուանեցայց յորդիսն Իսրայէլի. և եղէց նց Ած:

46 * Եւ ծանիցեն՝ թէ ես եմ Տր Ած նոցա. որ հանի զնոսա յերկրէն եգիպտացւոց՝ անուանել նոցա՝ և լինել նոցա Տր Ած:

‖Թուոց 28.3.

## ԳԼ: Լ:

1 Եւ արասցես սեղան խնկական խնկոց յանփուտ փայտից:

2 * Եւ արասցես զնա կանգնաւ յերկայնութի, և կանգնաւ 'ի լայնութի. չորեքկուսի լինիցի՝ և յերկուց կանգնոց բարձրութի նորա. և եղ ջիւրք իւր անդստին 'ի նմանէ:

3 * Եւ պատեսցես զնոսա ոսկւով սրբով. զվանդակն նորա և զկողմանս շուրջանակի: և զեղջիւրս նորա. և արասցես նմա պսակ ոսկի շուրջանակաւ շուրջանակի:

4 * Եւ երկուս օղս ոսկիս սուտ արասցես, ընդ շրջանակաւ պսակին նր յերկոցունց կողմանց:

5 * Եւ արասցես յերկոսին անկիւնս նր. և եղիցին լծակք օղալածացն բառնալ զնա նոքօք:

6 * Եւ արասցես զլծակսն յանփուտ փայտից. և պատեսցես զնոսա ոսկւով:

7 * Եւ դիցես զնոսա յանդիման վարագուրին, որ իցէ առաջի տապանակին վկայութեանց. ընդդէմ վկայութեն՝ որ իցէ առ վկայութեքն՝ որովք երեւեցայց քեզ անդ:

8 * Եւ արկցէ 'ի վերայ նր Ահարոն խունկ համդերձեալ ամզեալ մանր. ընդ առաւօտս առաւօտս յորժամ զճրագն համդերձիցէ. ծխեսցէ խունկ 'ի վերայ նորա:

9 * Եւ յորժամ լուցանիցէ Ահարոն զճրագն երեկորին, ծխեսցէ 'ի վերայ նորա խունկս յաճախութե հանապազորդս

10 առաջի Տն յազգս իւրեանց:

* Եւ ոչ հանիցէք 'ի վերայ նր խունկ օտար. և պտուղս. և զոհս՝ և նուէրս մի նուէրիցէք 'ի վերայ նորա:

11 * Եւ քաւեսցէ Ահարոն 'ի վերայ եղջերացն նորա, մի անգամ 'ի տարւոջ՝ յարենէ առ 'ի վասն մեղացն սրբութե և քաւութե. մի անգամ 'ի տարւոջ սրբեսցէ զնա. զի սրբութի սրբութեց Տն է:

12 * Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ և ասէ՝ եթէ ‖ունիցիս զհամար որդւոցն Իսրայէլի 'ի հանդիսի իւրեանց. և տացեն իւրաքանչիւր փրկանս ընդ անձին իւրոյ Տն ըստ հանդիսին իւրեանց. մի լինիցի 'ի նոսա մահ 'ի հանդիսի անդ իւրեանց:

13 * Եւ այս ինչ է զոր տայցեն՝ որք անցանիցեն 'ի հանդիսի անդ՝ զկէս երկդրամենին. որ իցէ ըստ սրբութե երկդրամենին. ‖քսան դանգ է երկդրամեանն. և կէս երկդրամենին եղիցի հաս Տեառն:

14 * Ամենայն որ անցանիցէ 'ի հանդիսի անդ՝ 'ի քսան ամենից և 'ի վեր տացեն հաս Տն:

15 * Մեծատունն մի յաւելցէ. և տնանկն մի պակասեցուսցէ:

16 * Ի կիսոյ երկդրամենին՝ 'ի տալ անդ զհաս Տն որդւոցն Իսրայէլի. առնել քաւութի վասն անձանց ձերոց: և առցես զարծաթ հասին յորդւոցն Իսրայէլի. և տացես զնա 'ի գործ խորանին վկայութեան. և եղիցի որդւոցն Իսրայէլի յիշատակ առաջի Տն քաւել վն անձանց նց:

17 * Խօսեցաւ Տր՝ ընդ Մովսէսի՝ և ասէ:

18 * Արա աւազան պղնձի. և զխարիսխ նորա պղնձի. առ 'ի լուանալոյ 'ի նմա. և դիցես զնա ընդ խորանն վկայութե և ընդ սեղանն. և արկցես 'ի նա ջուր:

19 * Եւ լուասցեն Ահարոն և որդիք նր 'ի նմանէ զձեռս և զոտս իւրեանց:

20 * Յորժամ մտանիցեն 'ի խորանն վկայութե լուասցեն ջրով՝ և մի մեռանիցին. կամ յորժամ մերձենայցեն 'ի սեղանն պաշտել՝ և հանել զողջակէզսն Տն, լուասցեն

21 զձեռս և զոտս իւրեանց: * Զի մի մեռանիցին՝ և եղիցի նց օրէն՝ յաւիտենական. նմա և ազգաց նր յետ նր:

22 * Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի:

23 * Եւ ասէ. և դու առ քեզ խունկս անուշունս. ծաղիկ ընտիր զմռնենեաց հինգ հարիւր սիկղ՝ և կինամոմոն զանոյշ զկէս այնորիկ երկերիւր և յիսուն. և զխունկ եղէգն զանոյշն երկերիւր և յիսուն:

24 * Եւ հիրիկ հինգ հարիւր սիկղ ըստ սրբութեն. և իւղ 'ի

25 ձիթենեաց հիմնաւ միով: * Եւ արասցես զայն եղ յօծութն սրբութե. իւղ եփեալ ըստ արուեստի իւղագործաց

‖Թուոց 1. 2.
չին՝
‖Ղեւտ 27.25.
Թուոց 3.47.
Եզեկ. 45.12.

ծաց՝ իւղ յօծութեան սրբութեան լինիցի ։ 26 *Եւ օծցես 'ի նմանէ զխորան վկայութեան. և զտապանակ վկայութեան ։ 27 *Եւ զսեղանն և զամենայն զկահ նր. և զաշտանակն և զամ կահ նորա. և զսեղան խնկոցն ։ 28 *Եւ զսեղան ողջակիզացն. և զամենայն զկահ նր. զաւազանն, և զյատակ նորա ։ 29 *Եւ սրբեսցես զնոսա. և եղիցի սրբութիւն սրբութեան. ամ որ մերձենայցէ 'ի նոսա՝ սրբեսցի ։ 30 *Եւ զԱհարոն և զորդիս նր օծցես. և սրբեսցես զնս ինձ 'ի քահանայութիւն ։ 31 *Եւ ընդ որդիսն իսրայէլի խօսեսցիս՝ և ասասցես՝ իւղ յօծութեան օծութեան սրբոյ եղիցի ձեզ յազգս ձեր ։ 32 *'Ի մարմին մարդոյ ոչ օծանի. և ըստ այդմ համադրեծանի ոչ առնիցէք ձեզ այդպիսի՝ զի սբ է. և 'ի սրբութիւն եղիցի ձեզ ։ 33 *Որոք առնիցէ այդպիսի. և որոք տացէ 'ի դմանէ այլազգւոյ, սատակեսցի 'ի ժողովրդենէ իւրմէ ։ 34 *Եւ ասէ Տր ցմովսէս. ա՛ռ դու քեզ խունկս անուշունս. ստաշխն. և եղունգն. և զքաղբաննն զանոյշ. և զկնդրուկ զերևելի՝ զի հաւասարակ առ հաւասարակ լինիցին ։ 35 *Եւ արասցես զայն խունկ եփեալ. գործ իւղագործաց համադրեծանի գործ մաքուր 'ի սրբութիւն ։ 36 *Եւ աղասցես 'ի նոցանէ մանր. և դիցես 'ի նմանէ յանդիման վկայութեանցն 'ի խորանին վկայութեան ուստի երևեցայց քեզ անտի. զի 'ի սրբութիւն սրբութեանցն եղիցի ձեզ խունկն այն. 37 զոր առնիցէք ։ *Ըստ այնմ համադրեծանի մի առնիցէք ձեզ խունկս. սրբութիւն Տն եղիցի ձեզ ։ 38 *Այր ոք՝ որ առնիցէ ըստ այնմ օրինակի առնուլ հոտ 'ի նմանէ, կորիցէ 'ի ժողովրդենէ իւրմէ ։

## Գլ: ԼԱ:

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ. 2 *Ահաւադիկ յանուանէ կոչեալ իմ զբեսելիէլ զուրիան զորդի ովրայ յազգէ յուդայ ։ 3 *Եւ լցուցի զնա Այծեղէն հոգւով իմաստութեան. և հանճարոյ՝ և գիտութեան ամենայն գործոյ ։ 4 *Խելամուտ լինել՝ և ճարտարապետել. գործել զոսկին՝ և զարծաթ՝ և զպղինձ ։ 5 *Եւ զկապուտակն՝ և զծիրանին՝ և զկարմիր մանեալ. և զականակապն 'ի լրութիւն գործոյն. և զհիւսնութիւն փայտից ։ գործել ըստ ամենայնի գործոյ ։ 6 *Եւ ես աՀա ետու զնա՝ և զեղիաբ աքիսամայ յազգէ դանայ. և 'ի սիրտ ամենայն իմաստնոյ ետու զիմաստութիւն. և արասցեն զամ, զոր ես անդամ պատուիրեցի քեզ ։

7 *Զխորանն վկայութեան. և զտապանակ կտակարանայն. և զքաւութիւն որ 'ի վերայ նր. և զամենայն զսպաս 8 խորանին. և զզոհանոցսն ։ *Եւ զսեղանն և զամ զկահ նորա. և զաշտանակն սուրբ և զամենայն զկահ նր 9 և զսեղան խնկոցն ։ *Եւ զսեղան ողջակիզացն և զամենայն զկահ նր. և 10 զաւազանն և զխարիսխ նորա ։ *Եւ զպատմուճանս սպասաւորութեան. և զհանդերձս սրբութեան ահարոնի քահանային. և զպատմուճանս որդւոց նր 11 'ի քահանայանալ ինձ ։ *Եւ զիւղն օծութեան, և զխունկս համադրեծանաց սրբութեան, և զամ զոր միանգամ պատուիրեցի քեզ՝ արասցես ։ 12 *Խօսեցաւ 13 Տէր ընդ մովսէսի՝ և ասէ ։ *Եւ դու խօսեաց ընդ որդիսն իսրայէլի՝ և ասասցես. ‖ զգո՛յշ կացէք պահելոյ զշաբաթս իմ. զի նշանակ է ընդ իս և ընդ ձեզ յազգս ձեր. զի ծանիջիք թէ ես 14 եմ Տր՝ որ սրբեմ զձեզ ։ *Եւ պահեսջիք զշաբաթս. զի սրբութիւն է այն Տն, և ձեզ. և որ պղծեսցէ զնա՝ մահու մեռցի. ամ որ գործիցէ 'ի նմա գործ, սատակեսցի անձն այն 'ի միջոյ 15 ժողովրդեան իւրոյ ։ *Զվեց օր գործեսցես գործ. և յաւուրն եօթներորդի շաբաթ հանգստեան սրբութիւն Տն. ամ որ գործեսցէ զգործ յաւուր շաբաթու՝ մահու մեռցի ։ 16 *Եւ պահեսցեն որդիքն իսրայէլի զշաբաթս առնել զնոսա՝ յազգս ձեր 17 ուխտ յաւիտենական ։ *Ընդ իս և ընդ որդիսն իսրայէլի նշանակ իմ է յաւիտենական. ‖ զի զվեց օր արար Տր զերկին և զերկիր. և յաւուրն եօթներորդի դադարեաց՝ և հանգեաւ ։ 18 *Եւ ետ մովսէսի իբրև դադարեաց խօսել ընդ նմա 'ի լերինն սինայ. ‖ զերկուս տախտակսն վկայութեան. տախտակս քարեղէնս գրեալս մատամբն Այ ։

‖ Ել. 20.8. Եզեկ. 20.12.

‖ Ծննդ. 2. 2.

‖ 2. Օրէ. 9.10.

## Գլ: ԼԲ:

1 Եւ տեսեալ ժողովրդեանն՝ եթէ յամեաց մովսէս իջանել 'ի լեռնէ անտի. կուտեցաւ ժողովուրդն 'ի վր ահարոնի՝ և ասեն ցնա. ‖ արի՛ և արա՛ մեզ աստուածս՝ որք առաջնորդեսցեն մեզ ։ զի այրն այն մովսէս՝ որ էհան զմեզ յեգիպտոսէ, ոչ գիտեմք զի՛ եղև 2 նմա ։ *Եւ ասէ ցնոսա ահարոն. կորզեցէք զգինս ոսկիս յականջաց կանանց ձերոց. և ուստերաց՝ և դստերաց ձերոց՝ և բերէք առ իս ։ 3 *Եւ կորզեաց ամ ժողովուրդն զգինս ոսկիս յականջաց իւրեանց. և բերին 4 առ ահարոն ։ *‖ Եւ ընկալաւ 'ի ձեռաց

‖ Գործ. 7.40.

‖ Սաղմ. 105.19.

ւաց նը։ և ձուլեաց զայն քանդակա-
գործով. և արար որթ ձուլածոյ. և
ասեն. այս են աստուածք քո իսրայէլ.
որք հանին զքեզ յերկրէն եգիպտա-
ցւոց։ *Եւ իբրև ետես ահարոն՝ շի- 5
նեաց սեղան առաջի նորա. և քա-
րոզ կարդաց ահարոն՝ և ասէ. տօն
տեառն առ վաղիւ։



*Եւ կանխեալ ՚ի վաղիւ անդր եհան 6
ողջակէզս. և մատոյց զոհս փրկութե.
‖ և նստաւ ժողովուրդն յուտել և յըմ
պել՝ և յարեան ՚ի խաղալ։ *Եւ խօսե- 7
ցաւ Տր ընդ մովսիսի՝ և ասէ. ‖ գնա՛ էջ
դու աստի վաղվաղակի. զի անօրինե
ցաւ ժողովուրդն քո՝ զոր հաներ յերկ
րէն եգիպտացւոց։ *Ելցին վաղվա- 8
ղակի զճանապարհաւն՝ զոր պատուէ
րեցեր նց. արարին իւրեանց զորթ
ձուլածոյ՝ և երկիրպագին նմա. և զո-
հեցին նմա՝ և ասեն՝ ‖ այս են աստ-
ուածք քո իսրայէլ՝ որք հանին զքեզ
յերկրէն եգիպտացւոց։ *Եւ ասէ 9
Տր ցմովսէս՝ տեսի զժողովուրդն զայն.
‖ և ահա ժողովուրդ խստապարանոց
է։ *Եւ ‖ արդ թո՛յլ տուր ինձ՝ և բար 10
կացեալ սրտմտութե իմով ՚ի նոսա,
սատակեցից զնո. և արարից զքեզ
յազգ մեծ։ *Եւ աղաչեաց մովսէս 11
առաջի Տն Այ իւրոյ՝ և ասէ. ‖ ընդ-
է՞ր Տր բարկանաս սրտմտութե քով
ժողովրդեան քում. զոր հաներ յերկ
րէն եգիպտացւոց. զօրութե մեծաւ՝

‖1. Կոր. 10.7.
‖2. Օրէ. 9.12.
‖3. Թագ. 12.28.
‖Ա. 33.3.
2. Օրէ. 9.13.
‖Սաղ. 105.23.
‖Թուոց 14.12.

12 և բարձր բազկաւ։ *Գուցէ խօսիցեն
եգիպտացիքն՝ և ասասցեն. առ չա-
րութե՞ հան զնոսա, կոտորել զնոսա
՚ի լերինս. և ջնջել զնոսա յերկրէ.
դադարեա՛ ՚ի բարկութենէ սրտմը-
տութե՛ քոյ. և ցածի՛ր ՚ի չարեաց ժո-
13 ղովրդեան քոյ։ *Յիշեա՛ դու զաբրա
համ, և զիսահակ՝ և զյակոբ՝ զծա-
ռայս քո. որոց երդուեար յանձն քո.
խօսեցար ընդ նո՛՝ և ասես. առաւել
‖ բազմացուցից զզաւակ ձեր իբրև
զաստեղս երկնից բազմութե՛. և զամ
զերկիրն զայն՝ զոր ասացեր տալ զա-
ւակի նոցա՝ կալցին զնա յաւիտեան։
14 *Եւ ցածեաւ Տր ՚ի չարեացն, զոր ա-
սաց առնել ժողովրդեանն իւրում։
15 *Եւ դարձաւ մովսէս՝ էջ ՚ի լեռնէ ան
տի։ և երկու տախտակքն վկայութե՛
՚ի ձեռս նորա. տախտակք քարեղէնք.
գրեալք յերկոցունց կողմանց՝ աստի
16 և անտի գրեալք։ *Եւ տախտակքն
գործք Այ էին. և գիրն գրեալ Այ
17 դրոշմեալ ՚ի տախտակսն։ *Եւ լուեալ
յեսուայ զձայն ժողովրդեանն աղա-
ղակելոյ. ասէ ցմովսէս. ձայն պատե-
18 րազմի է ՚ի բանակի անդ։ *Եւ ասէ.
ո՛չ է ձայն նահատակաց զօրութե. և
ո՛չ բարբառ նահատակաց քաջութե.
այլ ձայն յանդգնելոյ ՚ի գինւոյ լսեմ
19 ես։ *Եւ իբրև մերձեցաւ ՚ի բանակ
անդր, և ետես զորթն և զպարուորսն,
բարկացեալ սրտմտութե՛ մովսէս, ըն
կէց ՚ի ձեռաց իւրոց զտախտակսն եր
կոսին. և խորտակեաց զնո՛ առ ստո-
20 րոտով լերինն։ *Եւ առեալ զորթն՝
զոր արարին՝ այրեաց հրով։ և խար-
տեաց զնա մանր. և ցանեաց ՚ի վե՛
ջրոցն. և արբոյց որդւոցն իսրայէլի։
21 *Եւ ասէ մովսէս ցահարոն. զի՞նչ ա-
րար քեզ ժողովուրդդ. զի ածեր ՚ի
վերայ դոցա զանհնարին մեղադ։
22 *Եւ ասէ ահարոն ցմովսէս. մի՛ բար-
կանար սրտմտութե տէր իմ. զի դու
ինքնին գիտես զյանդգնութի ժողո
23 վրդեանդ։ *Զի ասացին թէ արա՛
մեզ աստուածս՝ որք առաջնորդես-
ցեն մեզ. զի այրն այն մովսէս՝ որ եհան
զմեզ յեգիպտոսէ, ո՛չ գիտեմք, զի՛
24 եղև նմա։ *Եւ ասեմ ցնոսա, եթէ
ուրուք իցէ ոսկի, կողոպտեցէք և բե
րէք. և ետուն ցիս. և ընկեցի զայն
25 ՚ի հուր. և ել որթդ այդ։ *Եւ ետես
մովսէս՝ եթէ յանդգնեաց ժողովուրդն.
քանզի յանդգնոյց զնոսա ահարոն յառն
26 հարութի թշնամեաց իւրեանց։ *Եւ
եկաց մովսէս առ դրան բանակին, և
ասէ. որք Տն իցէ՝ առ իս մատիցէ.
հասանէին առ նա ամենայն որդիքն

‖Ծննդ. 12.7. և 15.5. և 48. 16.

զեւեայ ։ * Եւ ասէ ցնս. այսպէս ասէ 27
Տր Ած իսրայէլի. դիք իւրաքանչիւր
զսուր իւր յազդեր իւրում. անցէք և
այսրէն դարձարուք դրանէ 'ի դուռն
բանակիդ. և կոտորեցէք իւրաքանչիւր
զեղբայր, և իւրաքանչիւր զընկեր իւր՝
և իւրաքանչիւր զմերձաւոր իւր ։
* Եւ արարին որդիքն ղեւեայ. որպէս 28
ասաց մովսէս. և անկան 'ի ժողովրդե-
նէ անտի յաւուր յայնմիկ, քսան և
երեք հազար այր ։ * Եւ ասէ ցնոսա 29
մովսէս. լցէք զձեռս ձեր այսօր Տն
իւրաքանչիւր յորդի իւր. և իւրաքանչ
իւր յեղբայր իւր. տալ 'ի վերայ ձեր
այսօր օրհնութի ։ * Եւ եղև 'ի վաղիւ 30
անդր. և ասէ մովսէս ցժողովուրդն ։
դուք մեղայք զմեղդ զայդ զմեծ ։
բայց ես արդ ելից առ Ած. զի ցածու-
ցից վս մեղացդ ձերոց ։ * Դարձաւ 31
մովսէս անդրէն առ Տր՝ և ասէ. աղա-
չեմ զքեզ Տր ։ մեղաւ ժողովուրդն
այն՝ մեղս անհնարինս. և արարին իւր
եանց աստուածս ոսկեղէնս. արդ
եթէ թողուս նոցա զմեղս իւրեանց
թող ։ * Ապա թէ ոչ՝ ջնջեա զիս 'ի 32
դպրութենէ քումմէ՝ յոր գրեցեր ։
* Եւ ասէ Տր ցմովսէս. եթէ ոք մեղաւ 33
առաջի իմ, ջնջեցից զնա 'ի դպրութե
իմմէ ։ * Բայց արդ երթ՝ էջ և առաջ 34
նորդեա ժողովրդեանն այնմիկ 'ի տե
ղին՝ զոր ասացի քեզ. և ահա հրեշտակ
իմ երթիցէ առաջի երեսաց քոց. բայց
յաւուր յորում այց արարից, ածից
'ի վերայ նոցա զմեղս իւրեանց ։ * Եւ 35
եհար Տր զժողովուրդն վասն առնե-
լոյ զորթն՝ զոր արար ահարոն ։

## ԳԼ ։ ԼԳ ։

Եւ ասէ Տր ցմովսէս՝ երթ՝ ել աս- 1
տի. դու և ժողովուրդն քո՝ զոր
հաներ յերկրէն եգիպտացւոց, յեր-
կիրն զոր երդուայ աբրահամու՝ իսա
հակայ՝ և յակոբայ. ասեմ, ‖ զաւակի
ձերում տաց զնա ։ ‖ * Եւ առաքեցից 2
առաջի երեսաց քոց զհրեշտակ իմ. և
մերժեսցէ ‖ զքանանացին. և զամոր-
հացին. և զքետացին. և զփերեզա-
ցին. և զգերգեսացին. և զխևացին. և
զյեբուսացին ։ * Եւ տարայց զքեզ 3
յերկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր.
բայց ես ոչ ելից ընդ քեզ. ‖ վասն խս-
տապարանոց լինելոյ ժողովրդեանն.
զի մի սատակեցից զքեզ 'ի ճանա-
պարհի ։ * Եւ լուեալ ժողովրդեանն 4
զբանն զայն չար, սուգ առին սգաւո-
րօք՝ և ոչ էառ այր զզարդ զանձամբ ։
* Եւ ասէ Տր ցմովսէս. ասա դու ցոր- 5
դիսն իսրայէլի. դուք ժողովուրդ խս-

Ծննդ. 12.7. ‖ Ել. 23.20. ‖ 2. Օրէ. 7.21. Յեսու. 24.11. ‖ Ել. 32. 9. 2. Օրէ. 9.13.

տապարանոցք էք. զգո՛յշ լերուք՝ գու-
ցէ և այլ ես հարուած ածիցեմ 'ի վս
ձեր. և սատակիցեմ զձեզ ։ արդ մեր-
կացարուք զպատմուճանս փառաց
ձերոց. և զզարդ քո 'ի քէն. և ցուցից
6 քեզ՝ զինչ առնիցեմ քեզ ։ * Եւ մեր-
կացան որդիքն իսրայէլի զզարդ իւր-
եանց. և զպատմուճանս իւրեանց 'ի
7 քօրէբ լեռնէ ։ * Եւ առեալ մովսէսի
զխորան իւր էհար արտաքոյ բանա-
կին. մեկուսի 'ի բանակէ անտի. և
կոչեցաւ այն խորան վկայութե ։ և
լինէր ամ ոք որ խնդրէր ինչ 'ի Տէ,
ելանէր 'ի խորանն վկայութե արտա
8 քոյ բանակին ։ * Եւ յորժամ երթայր
մովսէս 'ի խորանն, կայր ամենայն ժո-
ղովուրդն դէտակնկալեալ իւրաքանչ
իւր ուրուք առ դուրս խորանին ։ և
հայէին ընդ մովսէս մինչ երթայր՝ և
9 մտանէր 'ի խորանն ։ * Եւ յորժամ
մտանէր մովսէս 'ի խորանն, իջանէր
սիւն ամպոյն՝ և կայր առ դուրս խո-
10 րանին՝ և խօսէր ընդ մովսէսի ։ * Եւ
տեսանէր ամ ժողովուրդն զսիւն ամ
պոյն. որ կայր առ դուրս խորանին. և
կային ամ ժողովուրդն յոտն. և երկիր
պագանէին իւրաքանչիւր առ դուրս
11 խորանի իւրոյ ։ * Եւ խօսէր Տր ընդ
մովսէսի դէմ յանդիման. որպէս ոք զի
խօսիցի ընդ բարեկամի իւրում ։ և
դառնայր 'ի բանակ անդր. բայց պաշ
տօնեայն նր յեսու որդի նաւեայ ո՛չ
12 ելանէր 'ի խորանէ անտի ։ * Եւ ասէ
մովսէս ցՏր. ահա ասես ցիս, հան զժո
ղովուրդդ զայդ. և դու ոչ ցուցեր
ինձ. զոր առաքիցես ընդ իս. և դու ցիս
ասացեր, եթէ ճանաչեմ զքեզ քան
զամենեսին. և ունիս շնորհս յինէն ։
13 * Արդ՝ եթէ գտի շնորհս առաջի քո,
ցո՛յց ինձ զանձն քո յայտնապէս. զի
գիտացից՝ եթէ իւ գտեալ իցէ իմ
շնորհս առաջի քո. և զի ծանեայց՝ ե-
թէ ժողովուրդս քո այս՝ ազգ մեծ
14 լինիցի ։ * Եւ ասէ. ես ինքնին երթայց
առաջի քո. և զետեղեցից զքեզ ։
15 * Եւ ասէ ցնա՝ եթէ ոչ դու ինքնին
երթիցես ընդ մեզ. մի՛ հաներ զիս
16 աստի ։ * Եւ զիա՞րդ յայտնի լինիցի,
եթէ արդարև գտի շնորհս առաջի
քո. և ես՝ և ժողովուրդս քո ։ այլ յեր
թալն քո ընդ մեզ փառաւորիցուք՝ և
ես՝ և ժողովուրդս քո, քան զամենայն
17 ազգս որք իցեն 'ի վերայ երկրի ։ * Եւ
ասէ Տր ցմովսէս՝ և զայդ ես զքո բան՝
զոր ասացեր, արարից. քանզի գտեր
շնորհս առաջի իմ. և ճանաչեմ զքեզ
18 քան զամենեսին ։ * Եւ ասէ՝ ցո՛յց ինձ
19 զփառս քո ։ * Եւ ասէ՝ ես անցից առա

ջի

ջի քո փառօք իմովք. և կոչեցից յանուն
|| Հռով. 9.15. Տն առաջի քո. || և ողորմեցայց, որում
ողորմեցայց. և գթացայց, յոր գթա_
ցայց: *Եւ ասէ. ոչ կարես տեսանել 20
զերեսս իմ. զի ոչ տեսանէ մարդ զե_
րեսս իմ. և ապրի: *Եւ ասէ Տր. ահա 21
տեղի մի առաջի իմ. և կացցես 'ի վե
րայ վիմին: *Յորժամ՝ անցանիցեն 22
փառքն իմ. և եդից զքեզ 'ի ծերպի
վիմին. և ծածկեցից զքեզ ձեռամբ
իմով՝ մինչև անցից ես: *Եւ բար_ 23
ձից զձեռն իմ 'ի քէն. և ապա տես_
ցես զյետոյսն իմ. բայց երեսք իմ
քեզ մի երևեսցին:



## ԳԼ: ԼԴ.

|| 2. Օրէ. 10.1. Եւ ասէ Տր ցմովսէս. || կոփեա՛ դու 1
քեզ երկուս տախտակս քարե_
ղէնս ըստ առաջնոց տախտակացն. և
ել առիս 'ի լեառնն. և գրեցից 'ի վր
տախտակացն զպատգամսն՝ որք էին
յառաջին տախտակսն՝ զորս խորտա_
կեցերն: *Եւ եր պատրաստ առ վա_ 2
ղիւ. և ելանիցես ընդ առաւօտս 'ի
լեառնն սինայ. և մնասցես ինձ անդ
'ի վերայ գլխոյ լերինն: *Եւ մի ոք 3
ելանիցէ ընդ քեզ. և մի ոք երևեսցի
ամենևին 'ի լերինն. և արջառ՝ և ոչ
խար մի արածեսցին մօտ 'ի լեառնն:
*Եւ կոփեաց երկուս տախտակս քա 4
րեղէնս. ըստ օրինակի առաջնոցն. և
կանխեալ մովսէսի ընդ առաւօտն՝ ել

'ի լեառնն սինայ. որպէս հրամայեաց
նմա Տր: և եառ մովսէս ընդ իւր զեր
5 կուս տախտակսն քարեղէնս: *Եւ
էջ Տր ամպով. և կայր յանդիման նր
6 անդ: և կոչեաց զանուն Տն: *Եւ
էանց Տէր առաջի նորա: և կարդաց
|| Տր Ած գթած՝ և ողորմած. երկայ_ || Սաղմ.
նամիտ՝ բազումողորմ. և ճշմարիտ: 102. 8.
7 *|| Որ պահէ զարդարութի և առնէ || Թուոց
զողորմութի 'ի հազարս ազգս: բառ_ 14.18.
նայ զանօրէնութիս և զանիրաւութիս 2. Օրէն
և զմեղս. || և ոչ անպարտ առնէ զպար 5.10.
տաւորն. || ածէ զանօրէնութիս հարց Երեմ.
յորդիս. և յորդւոց յորդիս՝ մինչև յե_ 32.18.
8 րիս և 'ի չորս ազգս: *Եւ երագեաց || Սաղմ.
9 մովսէս՝ խոնարհ երկիր եպագ: *Եւ 142.2.
ասէ՝ եթէ գտի շնորհս առաջի քո Տր, || 2. Օրէ
երթիցէ ընդ մեզ Տր (զի ժողովուրդս 5.9.
խստապարանոց է.) և բարձցես դու Երեմ.
զանօրէնութիս և զմեղս մեր. և եղի_ 32. 18.
10 ցուք մեզ քո: *Եւ ասէ Տր ցմովսէս.
ահա ես || դնեմ ընդ քեզ ուխտ առա || 2. Օրէ
ջի ամենայն ժողովրդեան քոյ. և ա_ 5.2.
րարից սքանչելիս՝ որք ոչ եղեն յամ Երեմ.
երկրի. և յամ ազգս. և տեսցէ ամ 32.40.
ժողովուրդ՝ յորս ես դու 'ի միջի դո
ցա. զի զարմանալիք իցեն՝ զորս ես
11 արարից ձեզ: *Զգոյշ լեր դու ամի՝
զոր միանգամ ես պատուիրեմ քեզ
այսօր: ահաւասիկ ես մերժեմ յերե
սաց ձերոց զամորհացին. և զքանա_
նացին. և զքետացին. և զփերեզացին.
և զխևացին. և զգերգեսացին. և զյե
12 բուսացին: *Զգոյշ լեր անձին քում,
գուցէ դնիցես ուխտ ընդ բնակիչս
երկրին, յոր դու մտանիցես 'ի նոսա.
գուցէ լինիցի ձեզ գայթագղութի:
13 *Զբագինս նոցա կործանեսջիք. և
զարձանս նց փշրեսջիք. և զանտառս
նց կոտորեսջիք. և զդրօշեալս դից նց
14 հրով այրեսջիք: *Եւ մի պագանիցէք
երկիր աստուծոյ օտարի. զի Տր Ած
անուն նախանձելի է. Ած նախան_
15 ձոտ է: *|| Գուցէ դնիցեն ուխտ ընդ || Ելք.
բնակիչս երկրին. և պոռնկիցին զհետ 23.32.
դից նոցա. և զոհիցեն աստուծոց նց. 2. Օրէն
և կոչիցեն զքեզ՝ և ուտիցես 'ի զոհից 7. 2.
16 նց: *|| Եւ առնուցուս 'ի դստերաց || 3 Թագ
նոցա ուստերաց քոց. և 'ի դստերաց 11.2.
քոց՝ տայցես ուստերաց նց. և պոռն_
կիցին դստերք քո զհետ նց. և պոռն_
կեցուցանիցեն զուստերս քո զհետ
17 դիցն իւրեանց: *Եւ աստուածս ձու
18 լածոյս մի առնիցես քեզ: *Զտօն
բաղարջակերաց պահեսցես. զեօթն
օր բաղարջ կերիցես. որպէս պատուի_
րեցի քեզ, 'ի ժամանակի իւրում յամ_
սեանն կանխոց. զի յամսեանն կան_

(Ել. 13. 2. 12. և 22. 29.) րոց ելեր յեգիպտոսէ ։ 19 *Ամենայն որ բանայ զարգանդ՝ ինձ լիցի. և ամ արուք անասնոյ քոյ ։ 20 *Զանդրանիկն արջառոյ և անդրանիկն ոչխարի. և անդրանիկն իշոյ փրկեսցես գառամբ. ապա եթէ ոչ փրկեսցես զնա, զգինս նորա տացես ։ զամենայն անդրանիկս որդւոց քոց փրկեսցես, և ձեռնունայն առաջի իմ մի երևեսցիս ։

21 *Զվեց օր գործեսցես. և յաւուրն եօթներորդի հանգիցես ։ 'ի սերմանս և 'ի հունձս հանգիցես ։ 22 *Եւ տօն (Ել. 23. 15.) եօթներորդաց արասցես ինձ 'ի սկզբան հնձոց ցորենոյ ։ և զտօն արմտեաց ամփոփելոյ յընդմիջել տարւոյն ։ 23 (Ել. 23. 17.) *Երիս ժամանակս 'ի տարւոջ երևեսցի ամ արու մանուկ քո առաջի Տն Այ Իսրայէլի ։ 24 (2. Օր. 16. 16.) *Քանզի մերժեցից զազգսն յերեսաց քոց. և ընդարձակեցից զսահմանս քո. և ոչոք իցէ որ ակն դնիցէ երկրին քում. յորժամ ելանիցես երևել առաջի Տն Այ երիս ժամանակս 'ի տարւոջ ։ 25 *Մի (Ել. 23. 18. և 19.) զենուցուս 'ի վերայ խմորելոյ զարիւն զոհից իմոց ։ և մի ելանիցէ յայգ զենումն տօնի զատկի ։ 26 *Զառաջինն արմտիս երկրի քոյ տարցիս 'ի տուն Տն Այ քոյ. (Ել. 23. 19.) մի եփեսցես զգառն 'ի կաթն մօր իւրոյ ։ 27 *Եւ ասէ Տր ցմովսէս ։ գրեա դու քեզ զպատգամսդ զայդոսիկ. զի այդու բանիւ դնիցի ուխտ ընդ քեզ՝ և ընդ Իլի ։ 28 *Եւ էր մովսէս առաջի Տն (Ել. 24. 18. 2. Օր. 9. 9. և 18.) զքառասուն տիւ և զքառասուն գիշեր ։ հաց՝ ոչ եկեր. և ջուր ոչ էարբ. և գրեաց 'ի վերայ տախտակացն զբանս ուխտի զտասն պատգամացն ։ 29 *Մինչ դեռ իջանէր մովսէս 'ի լեռնէ սինայ, և երկոքեան (2. Օր. 4. 13.) տախտակքն ուխտի 'ի ձեռս մովսեսի էին ։ և յիջանել իւրում 'ի լեռնէ անտի, ոչ գիտէր մովսէս եթէ փառաւորեալ իցէ տեսիլ գունոյ երեսաց նր 'ի խօսիլ նորա ընդ նմա ։ 30 *Եւ ետես ահարոն և ամ որդիքն Իսրայէլի զմովսէս. և էր փառաւորեալ տեսիլ գունոյ երեսաց նորա. և երկեան մերձենալ 'ի նա ։ 31 *Եւ կոչեաց զնոսա մովսէս. և դարձան առ նա ահարոն՝ և ամ իշխանք ժողովրդեանն. և խօսեցաւ մովսէս ընդ նոսա ։ 32 *Եւ ապա մերձեցան առ նա ամ որդիքն Իսրայէլի. և պատմեաց նց զամենայն՝ զոր խօսեցաւ ընդ նմա Տր 'ի լերինն սինայ ։ 33 *Եւ իբրև դադարեաց 'ի խօսելոյ անտի ընդ նս. էարկ պատրուակ զերեսօք իւրովք ։ 34 (2. Կոր. 3. 13.) *Իբրև մտանէր մովսէս առաջի Տն խօսել ընդ նմա, մերկանայր զպատրուակն՝ մինչև այսրէն ելանելոյ ։ և իբրև ելանէր՝ խօսէր ընդ ամենայն որդւոցն Իսրայէլի՝ զոր միանգամ պատուիրեաց նմա Տր ։ 35 *Եւ տեսին որդիքն Իսրայէլի զերեսս մովսեսի զի փառաւորեալ էր տեսիլ գունոյ երեսաց նր. և արկանէր մովսէս պատրուակ 'ի վերայ երեսաց իւրոց, մինչև անդրէն մտանելոյ և խօսելոյ ընդ նմա ։

## ԳԼ: ԼԵ։

1 Եւ ժողովեաց մովսէս զամենայն ժողովուրդ որդւոցն Իսրայէլի՝ և ասէ ցնս. այս բանք են՝ զոր ասաց Տր առնել զնոսա ։ 2 *Զվեց օր գործեսցես զգործ. յաւուրն եօթներորդի հանգիցես. շաբաթ սուրբ է հանգիստ Տն. ամ որ գործեսցէ 'ի նմա, սատակեսցի ։ 3 *Մի լուցցի հուր յամենայն բնակութեան ձերում յաւուր շաբաթուց. զի ես եմ Տր ։ 4 *Եւ խօսեցաւ մովսէս ընդ ամ ժողովրդեան որդւոցն Իսրայէլի. այս պատգամ է՝ զոր պատուիրեաց Տր՝ և ասէ ։ 5 *Առէք 'ի ձէնջ հաս Տն. (Ել. 25. 2.) ամենայն որ զխարդ յօժարեսցի 'ի սրտի իւրում՝ բերցեն պտուղ Տն ։ ոսկի. և արծաթ. և պղինձ ։ 6 *Եւ ծիրանի և կարմիր կրկին մանեալ. և բեհեզ նիւթեալ. և մազ այծեաց ։ 7 *Եւ մորթ խոյոց կարմիր ներկեալ. և մորթս կապուտակեալս. և փայտս անփուտս ։ 8 *Եւ իւղ լուսոյ. և խունկս իւղոյ օծման. և խունկս հանդերձանաց ։ 9 *Եւ ակունս սարդիոնս. և ակունս 'ի դիր վակասին. և զպճղնաւորն ։ 10 *Եւ ամ որ իմաստուն իցէ սրտիւ 'ի ձեզ՝ եկեալ գործեսցէ զամ ինչ՝ զոր պատուիրեաց Տէր ։ 11 *Զխորանն և զնուիրատանս իւր. և զվիճակս նորա. և զգահաւորս նր. և զտախտակս նորա. և զնիգս նր. և զսիւնս նր. և զխարիսխս նր ։ 12 *Եւ զտապանակն վկայութեան. և զծածկոց նր. և զքաւութիւն. և զվարագոյրն. և զառագաստ սրահին. և զսիւնս նորա. և զակունսն զմրուխտ. և զխունկսն՝ և զիւղն օծման ։ 13 *Եւ զսեղանն՝ և զամ զկահ նր. և զհոլանոցս սեղանոյն՝ և զծածկս նր. և զամ զկահ նր. և զհացն երեսաց ։ 14 *Եւ զաշտանակն լուսոյ. և զամենայն զկահ նր. և զճրագարանս նր. և զիւղն լուսոյ ։ 15 *Եւ զսեղանն խնկոց՝ և զծածկս նր. զիւղն օծութեան՝ և զխունկսն հանդերձանաց. և զվարագոյր դրան խորանին ։ 16 *Եւ զսեղանն ողջակիզաց. և զվանդակս նր զպղնձիս. և զծածկս նորա. և զամ զկահ նր. և զաւազանն՝ 17 և զխարիսխն նր ։ *Եւ զառագաստ սրահին. և զսիւնս նորա. և զխա-

րիս-

րիսխունս նորա։ 18 * Եւ զսրահակ դրան սրահին. և զցիցս խորանին. և զցիցս սրահին. և զապարանս նոցա։ 19 * Եւ զպատմուճանսն որովք պաշտիցեն 'ի սրբութեան. և զպատմուճանս սրբս Ահարոնի քահանայի. և զպատմուճանս քահանայութեան որդւոցն Ահարոնի։ 20 * Եւ ել ամենայն ժողովուրդ որդւոցն Իսրայէլի առ 'ի Մովսիսէ։ 21 * Եւ բերին իւրաքանչիւր ոք և յօժարեցին սիրտք իւրեանց. և որոց զիարդ կամ եղև անձանց իւրեանց բերին նուէրս Տեառն. յամենայն գործս խորանին վկայութեան. և յամենայն նիւթս նորա. և յամենայն պատմուճանս սրբութեան։ 22 * Եւ բերին արք 'ի կանանց ամենեքեան՝ ոց եմիտք իւր վարէին. ակունս. և գինդս. և մատանիս. և ծամականս. և կշտապանակս ոսկեղէնս՝ և զամենայն անօթս. և ամենայն արք՝ որք և էին բերին նուէր ոսկւոյ Տեառն։ 23 * Եւ ամենայն այր առ որում գտանիւր կապուտակ՝ և ծիրանի՝ և կարմիր մանեալ՝ և բեհեզ՝ և մազ այծեաց՝ և մորթս խոյոց կարմիր ներկեալ. և մորթս կապուտակեալս։ 24 * Բերէին ամենայն, որ նուիրէր զնուէրս. արծաթ և պղինձ բերէին նուէրսն Տեառն. և ամենայն առ որում գտանիւր փայտ անփուտ՝ յամենայն գործ կահին բերէին։ 25 * Եւ ամենայն կին իմաստուն մտօք նիւթէր ձեռօք իւրովք. և բերէր մանեալ զկապուտակն՝ և զծիրանին՝ և զկարմիրն ներկեալ. և զբեհեզն։ 26 * Եւ ամենայն կանայք՝ որք յօժարեցին 'ի միտս իւրեանց՝ մանէին իմաստութեամբ զմազ այծեացն։ 27 * Եւ իշխանքն բերէին ակունս զմրուխտ։ և ակունս 'ի նիւթ վակասին՝ և տախտակին։ 28 * Եւ զհանդերձանս խնկոցն. և զիւղն լուսոյ. և զիւղն օծութեան։ 29 * Եւ ամենայն այր և կին՝ որոց յօժարէին միտք իւրեանց, մտանէին գործել զամենայն գործն՝ զոր պատուիրեաց Տէր գործել. և 'ի ձեռն Մովսէսի բերէին որդիքն Իսրայէլի զնուէրսն Տեառն։ 30 * Եւ ասէ Մովսէս ցորդիսն Իսրայէլի. || Տեսէք զի կոչեաց Աստուած յանուանէ զԲեսելիէլ զՈւրեան՝ զորդի Ուրեայ յազգէ Յուդայ։ 31 * Եւ ելից զնա Աստուածեղէն Հոգւով իմաստութեան. և հանճարով և գիտութեամբ, յամենայնի։ 32 * Ըստ ամենայնի գործոյ ճարտարապետել ճարտարապետութեամբ գործել զոսկին՝ և զարծաթն՝ և զպղինձ։ 33 * Եւ քանդակել զակունսն. և գործել զփայտն. և առնել զամենայն գործ իմաստութեան, և խելամտել. զի ետ 'ի սիրտ նորա զիմաստութիւն։ 34 * Եւ Եղիաբայ որդւոյ Աքիսամեայ յազգէ Դանայ։ 35 * Ելից մտօք իմաստութեան. խելամտել, գործել զամենայն գործ սրբութեան. զոստայնանկութեան. և զնկարու կապուտակին՝ և ծիրանեաւն՝ և կարմրովն ներկելով՝ և բեհեզով. անկանել գործել զամենայն գործ ճարտարութեան նկարակերտաց։

|| Ել. 31.2.

## ԳԼ. ԼԶ.

1 Արար Բեսելիէլ և Եղիաբ և ամենայն այր իմաստուն մտօք՝ որում տուեալ 'ի Տեառնէ իմաստութիւն, և գիտութիւն, խելամուտ լինիլ. գործել զամենայն գործ տարազու սրբութեանն. ըստ ամենայնի որպէս և հրամայեաց Տէր։ 2 * || Եւ կոչեաց Մովսէս զԲեսելիէլ և զԵղիաբ. և զամենեսին՝ որք ունէին իմաստութիւն 'ի սրտի. որոց ետ Աստուած հանճար 'ի սիրտս նոցա. և զամենեսին որք կամակար մտօք կամէին մերձենալ 'ի գործն, և սատարել։ 3 * Եւ առին 'ի Մովսիսէ զամենայն նուէրսն՝ զորս բերին որդիքն Իսրայէլի ամենայն 'ի գործ տարազու սրբութեանն առնել զայն. և ինքեանք ևս ընդունէին զնուէրսն 'ի նուիրաբերացն ընդ առաւօտս առաւօտս։ 4 * Եւ գային ամենայն իմաստունք՝ որք գործէին զգործ սրբութեանն, իւրաքանչիւր ըստ տարազու իւրում. 5 զոր ինքեանք գործէին։ * Խօսեցան ընդ Մովսիսի և ասեն. կարի յաճախէ բերել ժողովուրդդ քան զպաշտական տարազու պիտոյից գործոյն. զոր հրամայեաց Աստուած առնել։ 6 * Եւ հրամայեաց Մովսէս քարոզ կարդալ 'ի բանակին՝ և ասել. այր կամ կին մի ևս գործեսցեն 'ի պտուղ սրբութեան. և ապա արգելաւ ժողովուրդն 'ի բերելոյ։ 7 * Եւ զգործեալն իւրեանց բերէին յամենայն կազմած գործոյն գործել զայն՝ և դադարեցին։ 8 * Եւ գործէր ամենայն իմաստուն սրտիւ ընդ գործաւորսն զգործ խորանին. տասն փեղկեան 'ի բեհեզոյ մանելոյ՝ և 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ կրկնելոյ։ քերովբէ գործ անկուածոյ գործէին։ 9 * Երկայնութիւն միոյ փեղկին 'ի քսան և յութ կանգնոյ. և լայնութիւն 'ի չորից կանգնոց միոյ փեղկի. չափ նոյն էր ամենեցունց փեղկիցն։ 10 * Եւ կցել զհինգ փեղկսն ընդ միւս հինգ փեղկից՝ և զհինգ ևս փեղկս կցեալք ընդ այլոց հնգից։ 11 * Եւ արար ճարմանդս կապուտակեայս առ եզերբ միոյ փեղկին։ 12 * Ի կողմանէ առ 'ի խառնուածս. նոյնպէս արար և առ եզերբ արտաքնոյ փեղկին երկրորդի խառնուածոյն։ 13 * Յիսուն ճարմանդ արար միոյ փեղկի. և յիսուն ճարմանդ արար 'ի կողմանէ փեղկին. ըստ երկրորդի խառ-

|| Ել. 26.1.

|| 1. Մնաց. 21.29.

նուա-

նուածոյն , առ 'ի խառնելոյ իւրաքանչիւրոց ճարմանդացն ընդ միմեանս . և արար օղս ոսկիս յիսուն . և խառնեաց զփեղկսն ընդ միմեանս օղիւքն . և եղև խորան մի ։ 14 *Եւ արար փեղկս մազեղէնս ծածկիչս խորանին. մետասան փեղկս արար զնոսա ։ 15 *Երկայնութի միոյ փեղկի յերեսուն կանգնոյ. և լայնութի միոյ փեղկի 'ի չորից կանգնոց . չափ նոյն էր մետասանեցունց փեղկիցն ։ 16 *Եւ կցեաց զհինգ փեղկսն 'ի միասին . և զվեց փեղկսն 'ի միասին ։ 17 *Եւ արար յիսուն ճարմանդս առ եզերբ փեղկին՝ որ 'ի մէջ խառնուածոցն . արար յիսուն ևս ճարմանդս առ եզերբ փեղկին երկրորդի խառնուածոյն ։ 18 *Եւ արար օղս պղնձիս յիսուն. և կցեաց զխորանն՝ զի լինիցի մի ։ 19 *Եւ արար զմիթակս խորանին 'ի մորթոյ խոյոց կարմիր ներկելոց. և զարտախուրակսն 'ի կապուտակէ 'ի վերոյ կողմանէ ։ 20 *Եւ արար զերկուս սիւնս խորանին յանփուտ փայտից կանգնաւորս ։ 21 *Ի տասն կանգնոյ զերկայնութի միոյ սեան . և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զթանձրութի և զլայնութի միոյ սեան ։ 22 *Եւ երկուս սիւնիչս առ մի մի սիւն խառնեալ ընդ միմեանս . նոյնպէս արար ամ սեանց խորանին ։ 23 *Եւ արար զսիւնս խորանին . քսան սիւնս 'ի հարաւոյ կողմանէ՝ և քառասուն խարիսխս արծաթիս սեանցն քսանեցունց ։ 24 *Երկուս խարիսխս առ մի սիւն յերկոցունց կողմանց . և երկուս խարիսխս առ միւս ևս սիւն յերկոցունց կողմանց ։ 25 *Եւ յերկրորդ կողման խորանին ընդ հիւսիսի արար քսան սիւն ։ 26 *Եւ քառասուն խարիսխս արծաթիս . երկուս խարիսխս առ մի սիւն . և երկուս խարիսխս առ միւս ևս սիւն ։ 27 *Եւ 'ի թիկանց խորանին ընդ ծովակողմն արար զվեց սիւնս ։ 28 *Եւ երկուս սիւնս արար յանկիւնս խորանին յետուստ կողմանէ ։ 29 *Եւ էին հաւասարակ 'ի ներքուստ . և ըստ նմին օրինակի հաւասարակ էին 'ի գլխոյ կողմանէ . 'ի մի խառնուած . նոյնպէս արար և երկոցունց սեանցն՝ որք յանկիւնսն ։ 30 *Եւ էին ութ սիւն. և խարիսխք նոցա արծաթիք՝ վեշտասան խարիսխք . երկու խարիսխք առ մի սիւն . և երկու խարիսխք առ մի սիւն ։ 31 *Եւ արար պարզունակս յանփուտ փայտից . հինգ առ մի սիւն 'ի միոջէ կողմանէ խորանին ։ 32 *Եւ հինգ ևս պարզունակ առ միւս սիւն՝ յերկրորդ կողմանէ խորանին . և հինգ պարզունակ առ միւս սիւն խորանին 33 'ի թիկանց ընդ ծովակողմն ։ *Եւ արար զմիջին պարզունակն թափանցանց 'ի մէջ սեանցն 'ի կողմանէ 'ի կողմն ։ 34 *Եւ զերկուս սիւնս պատեաց ոսկով . և զերկուս օղամանեակս նց արար ոսկիս . յոր մտանիցեն պարզունակքն . և պատեաց զպարզունակսն ոսկով ։ 35 *Եւ արար վարագոյր 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմիրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ նիւթելոյ. գործ անկուածոյ գործեաց զնա քերոբ ։ 36 *Եւ եդ զայն 'ի վերայ չորից սեանցն յանփուտ փայտից յօսկիապատաց . և խոյակք նոցա ոսկիք . և չորք խարիսխք նց արծաթիք ։ 37 *Եւ արար զվարագոյր դրան խորանին վկայութե 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ , և 'ի կարմրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ նիւթելոյ գործ անկուածոյ քերոբ ։ 38 *Եւ զսիւնս նց հինգ, և զօղս նոցունց. և պատեաց զխոյակս նոցա ոսկով . և խարիսխք նոցա պղնձիք հինգ ։

## ԳԼ ։ ԼԷ ։

1 Եւ արար բեսելիէլ զտապանակն յանփուտ փայտից . յերկուց կանգնոց և 'ի կիսոյ զերկայնութի նր . և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զլայնութի նր . և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ զբարձրութի նր . և պատեաց զնա ոսկով 2 սրբով 'ի ներքոյ և արտաքոյ ։ *Եւ արար նմա ծնօտս ոսկիս շուրջանակի ։ 3 *Եւ ձուլեաց նմա չորս օղամանեակս ոսկիս 'ի չորեցունց կողմանց նր . երկուս օղամանեակս 'ի միոջէ կողմանէ . և երկուս օղամանեակս 'ի միւսմէ 4 կողմանէ՝ և ագոյց լծակացն ։ *Եւ արար լծակս յանփուտ փայտից , և 5 պատեաց զնոսա ոսկով ։ *Եւ ագուցին զլծակսն յօղամանեակսն 'ի կողմանց տապանակին, բառնալ զնա նո 6 քօք ։ *Եւ արարին զքաւութիւնն 'ի վերուստ տապանակին յոսկւոյ սրբոյ. յերկուց կանգնոց և 'ի կիսոյ զերկայնութի նր . և 'ի կանգնոյ և 'ի կիսոյ 7 զլայնութի նորա ։ *Եւ արար երկուս քրոբէս ոսկիս՝ ճախարակեայս գործեաց զնոսա յերկուց կողմանց քաւու 8 թեն ։ *Քերոբ մի 'ի վր միոյ գլխոյ քաւութեն . և քերոբ մի 'ի վր երկրորդի գլխոյ քաւութեանն անդստին 'ի քաւութենէ անտի արար զերկոսին քերոբսն . յերկոցունց ծայրից նորա ։ 9 *Եւ էր քրոբէիցն տարածեալ զթևս իւրեանց 'ի վերուստ . և հովանի ունէին թևօք իւրեանց 'ի վերայ քաւութեն . երեսք քրոբէիցն հանդէպ մի 10 միեանց 'ի վերայ քաւութեն ։ *Եւ

արար

արար զսեղանն զառաջաւոր (յոսկւոյ սրբոյ. և ձուլեաց նմա չորս օղամանեակս ոսկիս. երկուս ՚ի միոջէ կողմանէ. և երկուս յերկրորդէ կողմանէ. և ագոյցս, բառնալ զնա ագուցիւքն. և զագոյցս տապանակին, և զսեղանոյն արար) յանփուտ փայտից. (և պատեաց զնա ոսկւով. յերկուց կանգնոց զերկայնութիւն նորա. և ՚ի կանգնոյ և ՚ի կիսոյ զբարձրութիւն նորա։) 11 *Եւ պատեաց զնա ոսկւով սրբով. և արար նմա ծնօտս ոսկիս շուրջանակի։ 12 *Եւ արար նմին պսակ ուղկէն շուրջանակի. և արար ծնօտս ոսկիս պսակին նորա շուրջանակի։ 13 *Եւ արար նմա չորս օղամանեակս ոսկիս. և եդ զօղամանեակսն ՚ի չորս կողմանս. որք էին չորեցունց ոտից նորա։ 14 *Ընդերքոյ պսակին. և եղեն օղամանեակքն ագոյցք լծակացն առ ՚ի բառնալոյ զսեղանն։ 15 *Եւ արար երկուս լծակս յանփուտ փայտից. և պատեաց զնոսա ոսկւով առ ՚ի բառնալոյ զսեղանն։ 16 *Եւ արար զկահ սեղանոյն. և զսկաւառակս նորա. և զարկնակալս նորա. և զճաշակս նորա. և զնուիրանոցսն՝ որովք նուիրիցեն՝ յոսկւոյ սրբոյ։ 17 *Եւ արար զաշտանակն լուսոյ ձոյլ (ոսկի զբունն. և զստեղունսն յերկոցունց կողմանց նորա. և ՚ի ստեղանցն շառաւիղք ընտրեալք առ միմեանս։ Երեք ՚ի միոջէն. և երեք ՚ի միւսմէն հաւասարք միմեանց։ և զլուսակալս նորա որք էին ՚ի ծայրս ընկուզաձևս անդստին ընտրեալք. և զբաղմակալսն ՚ի նոսա. և զի իցեն ճրագարանքն ՚ի վերայ նորա. և զբաղմակալն զեօթն երորդ որ ՚ի գլուխ լուսակալին. որ ՚ի վերայ բուն իսկ գլխոյն ՚ի վերուստ ձոյլ համակ ոսկի, և զեօթն ճրագարանսն նորա ՚ի վերայ նորա ոսկիս. և զյարդարիչս նորա ոսկիս.) յոսկւոյ սրբոյ ճախարակեայ գործեաց զաշտանակն. զբունն և զստեղունս նորա. և զսկահաձևսն. և զգնտակսն՝ և զշուշանս նորա անդստին ՚ի նմանէ։ 18 *Վեց ստեղն արձակեալ ՚ի կողմանց նորա. երեք ստեղունք ՚ի միոջէ կողմանէ աշտանակին. և երեք ստեղունք յերկրորդ կողմանէ աշտանակին։ 19 *Երեք սկահաձևք ընկուզաձևք յօրինեալք ՚ի միում ստեղան՝ և գնտակ և շուշան։ և երեք սկահաձևք ընկուզաձևք յօրինեալք ՚ի միւսումն ստեղան՝ և գնտակ և շուշան, այսպէս վեցեցունց ստեղանցն արձակելոյ յաշտանակէ անտի։ 20 *Եւ ՚ի բուն աշտանակին չորք սկահաձևք ընկուզաձևք յօրինեալք. և գնտակք նորին և շուշանք։ 21 *Եւ գնտակ մի ՟ը երկոքումբք ստեղամբքն. անդստին ՚ի նմին վեցեցունց ստեղանցն արձակելոյ ՚ի նմանէ։ 22 *Գնտակք նորա և ստեղունք իւրեանց անդստինք ՚ի նմին՝ բովանդակ ճախարակեայք ՚ի միոջէ ոսկւոյ սրբոյ։ 23 *Եւ արար զճրագարանս նորա եօթն. և զունելիս՝ և զյարդարիչս նորա յոսկւոյ սրբոյ։ 24 *Ի տաղանդէ միոյ ոսկւոյ սրբոյ արար զնա՝ և զամ զկահ նորա։ 25 *Եւ արար զսեղանն ոսկեպատ յանփուտ փայտից ՚ի հինգ կանգնոց զերկայնութիւն նորա. և ՚ի հինգ կանգնոց զլայնութիւն նորա չորեքկուսի. և յերից կանգնոց զբարձրութիւն նորա. և զեղջիւրս նորա անդստին ՚ի նմանէ։ 26 *Եւ պատեաց զնա ոսկւով սրբով. և զյարկ նորա և զկողմանս նորա շուրջանակի. և զեղջիւրս նորա։ 27 *Եւ արար նմա ծնօտս ոսկիս շուրջանակի. և երկուս օղամանեակս ոսկիս ընդ ծնօտիւքն նորա առ ՚ի կողմն. ընդ երկոքումբք կողմամբք նորա, ՚ի յագոյցս լծակացն առ ՚ի բառնալոյ զնա նոքօք։ 28 *Եւ արար զլծակսն յանփուտ փայտից՝ և պատեաց զնա ոսկւով։ 29 *Եւ արար զիւղն օծութեան զսուրբ. և զհանդերձանս խնկոցն գործ մաքուր իւղագործաց։

## ԳԼ. ԼԸ.

1 Եւ արար զսեղանն պղնձապատ (՚ի բուրուառացն պղնձեաց՝ որք էին ՚ի ձեռս արանցն ապստամբեաց հանդերձ ժողովրդեամբն կորխայ) յանփուտ փայտից. ՚ի հինգ կանգնոց զերկայնութիւն նորա. և ՚ի հինգ կանգնոց լայնութիւն նորա չորեքկուսի. և յերից կանգնոց բարձրութիւն նորա։ 2 *Արար և զեղջիւրսն նորա ՚ի վերայ չորեցունց անկեանց իւրոց. անդստին ՚ի նմանէ էին եղջիւրքն նորա. և պատեաց զնոսա պղնձով։ 3 *Եւ արար զամ կահս սեղանոյն. զխարիսխն և զըլշակն. և զտաշտսն. և զմնահանս. և զբուրուառսն։ զամ կահ նորա արար պղնձի։ 4 *Եւ արար զգահաւորակն սեղանոյն. գործ վանդակագործ պղնձի ՚ի բուրուառացն. ՚ի ներքուստ մինչև ցմէջս։ 5 *Եւ եդ նմա չորս օղամանեակս պղնձիս ՚ի չորեցունց կողմանց գահաւորակի սեղանոյն ագոյցս նգացն։ 6 *Եւ արար զլծակսն յանփուտ փայտից. և պատեաց զնա պղնձով։ 7 *Եւ ագուցին զլծակսն յօղամանեակսն ՚ի կողմանս սեղանոյն. բառնալ զսեղանն նոքօք։ բովանդակ տախտակամած գործեաց զնա ՚ի ներքս ունայն։ 8 *‖Եւ արար զաւազանն պղնձի. և զխարիսխ նորա պղնձի և հայելեաց կանանց ուխտաւորաց. որք

‖ Ել. 30. 18.

որք պահեցին զպահս առ դրան խորանին վկայութեան (յաւուր յորում եհար զխորանն): 9 *Եւ արար զսրահն՝ որ հայէր ընդ հարաւ. և զառագաստ սրահին 'ի բեհեզոյ մանելոյ հարիւր առ հարիւր: 10 *Եւ սիւնք նոցա քսան. և խարիսխք նոցա պղնձիք. զարդք սեանցն և խոյակք նոցա արծաթիք: 11 *Եւ ընդ կողմն հիւսիսոյ հարիւր առ հարիւր. և սիւնք նոցա քսան. և խարիսխք նոցա պղնձիք քսան. և զարդք սեանցն և դրօշակք նոցա արծաթիք: 12 *Եւ ընդ ծովակողմն սրահք 'ի յիսուն կանգնոյ. և սիւնք նոցա տասն. և խարիսխք նոցա տասն՝ և զարդք սեանցն և դրօշակք նոցա արծաթիք: 13 *Եւ ընդ կողմն արևելից 'ի յիսուն կանգնոյ զառագաստն: 14 *Ի հնգետասան կանգնոյ 'ի թիկանց. և սիւնք նոցա երեք՝ և խարիսխք նոցա երեք: 15 *Եւ յերկրորդ թիկունսն առ դրամբ սրահին, սրահք 'ի հնգետասան կանգնոյ. և սիւնք նոցա երեք. և խարիսխք նոցա երեք: 16 *Ամենայն սրահք խորանին շուրջանակի 'ի բեհեզոյ մանելոյ: 17 *Եւ խարիսխք նոցա պղնձիք. և դրօշակք սեանցն, և խոյօղք նոցա արծաթիք. և խոյակք նոցա արծաթապատք. և սիւնքն արծաթապատք: 18 *Ամենայն սիւնք սրահակին և սրահակք դրան սրահին, գործ նկարակերպ 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ մանելոյ. և 'ի բեհեզոյ նիւթելոյ. 'ի քսան կանգնոյ երկայնութիւն. և 'ի հնգետասան կանգնոյ բարձրութիւն և լայնութիւն հաւասարակ. ըստ առագաստից սրահին: 19 *Եւ սիւնք նոցա չորք. և խարիսխք նոցա պղնձիք չորք՝ և խոյօղք նոցա արծաթիք. և խոյակք նոցա արծաթապատք: 20 *Եւ ամենայն ցիցք սրահին և խորանին շուրջանակի պղնձիք:

21 *Եւ այս էր պայման խորանին վկայութեան որպէս հրաման ետ մովսէսի կազմել զպաշտօն ղևտացւոյն 'ի ձեռն իթամարայ որդւոյ ահարոնի քահանայի: 22 *Եւ բեսելիէլ ուրեան որդի ուրայ յազգէ յուդայ. և արար՝ որպէս և հրաման ետ Տէր մովսէսի: 23 *Եւ ապա եղիաբ աքիսամայ յազգէ դանայ. որ ճարտարապետէր զոստայնանկութիւն. և զասեղնագործութիւն. և նկարակերտութիւն 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ. և 'ի կարմրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ: 24 *Ամենայն ոսկւոյն՝ որ գործեցաւ 'ի գործն. ըստ ամենայն գործոյ սրբութեանցն եղև կշիռ ոսկւոյն նուիրացն քսան և ինն տաղանդ և եօթն հարիւր և երեսուն սիկղ. ըստ սրբութեան սկեղն: 25 *Եւ արծաթոյ նուէրք յանցելոց արանց ժողովրդեանն 'ի համարին. (հարիւր տաղանդ և հազար և եօթն հարիւր և եօթանասուն և հինգ սիկղ ըստ սրբութեան սկեղն. դրամ մի առ գլուխ կէս սկեղ. ըստ սրբութեան սկեղն) ամենայն որ անցանէր 'ի համարին անդ 'ի քսան ամենից և 'ի վեր, վեց հարիւր հազար և երեք հազարք և հինգ հարիւր և յիսուն: 26 *Եւ եղև հարիւր տաղանդ արծաթոյ 'ի ձոյլ հարիւր խոյակաց խորանին. և 'ի խոյակս վարագուրին հարիւր տաղանդ: 27 *Ի հարիւր խոյակս տաղանդ մի առ խոյակ: 28 *Եւ զհազար և զեօթն հարիւր և զեօթանասուն և զհինգ սիկղն, գործեաց 'ի խոյօղս սեանցն և պատեաց ոսկւով զխոյակս նոցա. և զարդարեաց զնոսա: 29 *Եւ պղինձ նուիրացն եօթանասուն տաղանդ. և երկու հազար և չորեքհարիւր սիկղ: 30 *Եւ արարին անուի զխարիսխս դրան խորանին վկայութեան. և զսեղանն պղնձի. և զցանցաւորակ սեղանոյն պղնձի. և զամենայն զսպաս սեղանոյն՝ և զխարիսխս սրահին շուրջանակի: 31 *Եւ զխարիսխս դրան սրահին. և զամենայն ցիցս խորանին. և զամենայն ցիցս սրահին շուրջանակի. (և զապարումն 'ի կապուտակէ և 'ի ծիրանւոյ, և 'ի կարմրոյ մանելոյ:)

## ԳԼ: ԼԹ:

1 Եւ || արար պատմուճանս պաշտամանն. պաշտել նոքօք 'ի սրբութեանն. և արար պատմուճանս սրբութեան՝ որք էին ահարոնի քահանայի. || Ելք. 28.6. 2 որպէս հրամայեաց Տէր մովսէսի: *Եւ արարին զվակասն յոսկւոյ՝ և 'ի կապուտակէ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ նիւթելոյ: 3 *Եւ հատանէին զթիթեղունս ոսկւոյն թելս թելս անկանել ընդ կապուտակին՝ և ընդ ծիրանւոյ՝ և ընդ կարմրոյ մանելոյ՝ և ընդ բեհեզոյ նիւթելոյ. գործ անկուածոյ վակասի գործեցին 4 զնա: *Ուսանուաւ յերկոցունց կողմանց ընդ միմեանս հիւսկէն. գործ 5 անկուածոյ 'ի միմեանս 'ի նոյն: *Եւ 'ի նմանէ գործեցին ըստ իւրում գործուածոյ, յոսկւոյ՝ և 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ մանելոյ՝ և 'ի բեհեզոյ նիւթելոյ. որպէս և հրամայեաց 6 Տէր մովսէսի: *Եւ գործեաց զերկոսին ակունսն զմրուխտ՝ ժապաւինեալս և ընդելուզեալս ոսկւով. քանդակեալս և մածուցեալս քանդակ 7 կնքոյ յանուանց որդւոցն իսրայէլի: *Եւ հաստատեաց զնոսա 'ի վերայ ուսոց վակասին, ականս յիշատակի որդւոցն իսրայէլի

ոպ՟ և հրամայեաց Տ՟ր մովսէսի ։ * Եւ 8
արար զտախտակն գործ անկուածոյ
նկարակերպ ը՟ն գործոյ վակասին, յոս
կւոյ՝ և ՚ի կապուտակէ՝ և ՚ի ծիրանւոյ՝
և ՚ի կարմրոյ մանելոյ՝ և ՚ի բեհեզոյ
նիւթելոյ ։ * Քառեքկուսի. և կրկին 9
գործեաց զտախտակն. թզաւ յերկայ
նութի՟ և թզաւ ՚ի լայնութի ։ * Եւ 10
անկանէր ընդ նմին անկուած ականս
կապ չորեքկարգեան ականցն. կարգն
առաջին՝ սարդիոն՝ և տպազիոն՝ և
զմրուխտ՝ կարգ մի ։ * Եւ կարգն երկ_ 11
րորդ՝ կարկեհան՝ և շափիւղայ՝ և յաս
պիս ։ * Եւ կարգն երրորդ՝ սուտակ՝ 12
և գոձագմ, և ակատ ։ * Եւ կարգն 13
չորրորդ՝ ոսկեակն. և եղունգն՝ և բիւ
րեղ. պատեալ և ընդելուզեալ ոսկւով ։
* Եւ ակունքն ըստ անուանց որդւոցն 14
իՂի էին. երկոտասանք յանուանց նց՟
գրեալք և քանդակեալք. ըստ իւրա_
քանչիւր անուանց ազգացն երկոտա_
սանեցունց ։ * Եւ արարին ընդ տախ_ 15
տակաւն վերջս փողփողեալս. գործ
հիւսկէն յոսկւոյ սրբոյ ։ * Եւ արարին 16
երկուս վահանակս ոսկիս. և երկուս
օղս ոսկիս. և եդին զերկուս օղսն ու_
կիս յերկոսին առաջս տախտակին ։
* Եւ եդին զվերջսն փողփողեալս ՚ի 17
վ՟ր երկուց օղոցն յերկոսին կողմանս
տախտակին. և յերկոսին խառնուածսն
զերկուս վերջսն փողփողեալս. և եդին
՚ի վերայ երկուց վահանակացն. և զնո՟
եդին ՚ի վերայ ուսոց վակասին ։
* Ի նմյանդիման յերեսաց կողմանէ. 18
և արարին երկուս օղս ոսկիս՝ և եդին
՚ի վերայ երկոցունց թևոց ՚ի ծայրս
տախտակին ՚ի գլուխ թիկանց վակա
սին՝ ՚ի ներքոյ կողմանէ. և արարին եր
կուս օղս ոսկիս. և եդին ՚ի վ՟ր երկո_
ցունց ուսոց վակասին ՚ի ներքոյ կող_
մանէ յերեսաց նր՟՝ ըստ վերնոյ խառ_
նուածոյ անկուածոյ վակասին ։ * Եւ 19
պնտեցին զտախտակն յօղից նր՟ մինչև
ց օղս վակասին խառնեալ ը՟ն միմեանս
՚ի կապուտակէ. հիւսեալս ը՟ն միմեանս
յանկուած վակասին. զի մի՛ զերծանի
ցի տախտակն ՚ի վակասէ անտի՝ ոպ՟
հրամայեաց Տ՟ր մովսէսի ։ * Եւ արարին 20
զվտաճակն ՚ի վ՟ր վակասին. գործ
անկուածոյ համակ կապուտակ ։ * Եւ 21
օձիք վտաճակացն անդէն ՚ի նորին ՚ի
միջի անկուածոյ հիւսկէն՝ գրապանաւ
օձիքն շուրջանակի անքակ ։ * Եւ արա 22
րին առ ստորոտով վտաճակացն խբբե
ծաղկեալս նռնաձևս ՚ի կապուտակէ՝
և ՚ի ծիրանւոյ՝ և ՚ի կարմրոյ մանելոյ՝
և ՚ի բեհեզոյ նիւթելոյ ։ * Եւ արարին 23
զանգակս յոսկւոյ սրբոյ. և եդին զզան
Ծբ

գակն ՚ի մէջ նռնաձևացն առ ստորո
24 տով վտաճակացն շուրջանակի ։ * ՚Ի
մէջ նռնաձևացն զանգակս ոսկիս. և
նռնաձևս զանգակս. և նռնաձև առ
ստորոտով վտաճակացն շուրջանակի
՚ի սպաս պաշտամանն՝ ոպ՟ հրամայեաց
25 Տ՟ր մովսէսի ։ * Եւ արարին պատմու_
ճանս բեհեզեղէնս գործ անկուածոյ
26 ահարոնի և որդւոց նր՟ ։ * Եւ զպա_
րօշն ՚ի բեհեզոյ. և զխոյրն ՚ի բեհեզոյ ։
27 * Եւ զանդրավարտիսն տաբատ ՚ի
28 նիւթոյ բեհեզոյ ։ * Եւ զկամարս նց՟ ՚ի
բեհեզոյ նիւթելոյ՝ և ՚ի կապուտակէ
և ՚ի ծիրանւոյ՝ և ՚ի կարմրոյ մանելոյ
գործ նկարու. զորօրինակ հրամայեաց
29 Տ՟ր մովսէսի ։ * Եւ արարին զթիթեղն
ոսկի նուէր սրբութե՟ յոսկւոյ սրբոյ. և
գրեցին ՚ի նմա գիր դրօշմեալ քանդա
30 կի, սրբութի՟ Տ՟ն ։ * Եւ եդին առ կա_
պուտակեայ ժապաւինեաւն. զի կայ_
ցէ ՚ի խոյրին ՚ի վերոյ կողմանէ. զոր
31 օրինակ հրամայեաց Տ՟ր մովսէսի. * Եւ
կատարեցաւ ա՟մ գործ խորանին՝ յար
կի վկայութե՟ն ։ և արարին որդիքն իՂի
ըստ ա՟մի ոպ՟ հրամայեաց Տ՟ր մովսէսի՝
նոյնպ՟ և արարին ։ և զաւելորդ զոսկի
նուիրացն արարին կահ պաշտելոյ նո_
32 քօք առաջի Տ՟ն ։ * Եւ բերին զպատմու_
ճանսն ՚ի խորանն առ մովսէս, և զյարկն
և զա՟մ զկահ նորա՝ և զաւանդսն և
զտախտակս նր՟. և զպարզունակս նր՟.
և զսիւնս նորա. և զխարիսխս նորուն ։
33 * Եւ զմաշկսն. և զմորթս խոյոցն ներ
կեալս կարմրով. և զվիժակսն կապու_
34 տակեայս ։ * Եւ զվարագոյրն որ ծած_
կէր զտապանակ կտակարանացն. և
35 զլծակսն ։ * Եւ զքաւութիւն. և զսե_
ղանն զառաջաւոր, և զա՟մ զկահ նր՟. և
36 զհացն երեսաց ։ * Եւ զաշտանակն սր՟.
և զճրագարանս նորա. և զճրագունսն
այրելոյ՝ և զա՟մ զկահ նր՟. զիւղն լուսոյ ։
37 * Եւ զսեղանն ոսկի. և զիւղն օծութե՟.
38 և զխունկսն համդերձանաց ։ * Եւ
39 զվարահակս դրանն՝ և զխորանն ։ * Եւ
զսեղանն պղնձի. և զլծակս նոյա. և
զա՟մ զկահ նորա. և զաւազանն. և զխա
րիսխ նորա ։ և զառագաստ սրահին՝ և
40 զսիւնս նր՟ ։ * Եւ զվարագոյր դրան
խորանին. և դրան սրահին. և զապա
ւանդակս նորա. և զցիցս նր՟. և զա՟մ
զկահ խորանին յարկի վկայութե՟ն ։
41 * Եւ զպատմուճանսն պաշտամանն
պաշտել ՚ի սրբութե՟. և զպատմուճանն
սրբութե՟՝ որք իցեն ահարոնի քահա_
նայի. և զպատմուճանս որդւոց նր՟ ՚ի
42 քահանայութի՟ ։ * Ըստ ա՟մի զոր մին_
գամ պատուիրեաց Տ՟ր՝ մովսէսի. նոյնպ՟
արարին որդիքն իսրայէլի զա՟մ կազ
մածն ։

մածն։ *Եւ ետես մովսէս զամ գործն. 43
և էր գործեալ ըստ օրինակին՝ որպէս
հրամայեաց ԱԾ մովսէսի՝ նոյնպէս և
արարին․ և օրհնեաց զնոսա մովսէս։

## ԳԼ․ Խ։

Ե՛ւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և 1
ասէ։ *Յամսեանն առաջնում 2
յամսամտի ամսոյն, կանգնեսցես զխո
րանն զյարկ վկայութե։ *Եւ դիցես 3
անդ զտապանակն վկայութե․ և ծած
կեսցես զտապանակն վարագուրաւն։
*Եւ տարցիս 'ի ներքս զսեղանն և յօ_ 4
րինեսցես զհացն 'ի վերայ նորա․ և
տարցիս 'ի ներքս զաշտանակն․ և դի_
ցես 'ի վերայ նր զճրագարանս նորա։
*Եւ դիցես զսեղանն ոսկի արկանել 5
խունկս առաջի տապանակի վկայու_
թենն։ և ձգեսցես զպատրուակ վարա
գուրին 'ի դրան խորանի վկայութենն։
*Եւ դիցես զսեղան ողջակիզացն՝ առ_ 6
դրան խորանին յարկի վկայութենն։
(և օծցես շուրջ զխորանն․ և զամ ինչ
որ 'ի նմա է՝ սրբեսցես շուրջանակի։)
*Եւ դիցես զաւազանն ընդ խորանն 7
վկայութե՝ և ընդ սեղանն․ և արկցեն
անդ ջուր։ *Եւ օծցես զսրահն շուր_ 8
ջանակի․ և ձգեսցես զսրահակ դրան
սրահին։ *Եւ առցես զիւղն օծութե՝ 9
և օծցես զխորանն՝ և զամենայն ինչ
որ 'ի նմա է․ և սրբեսցես զնա․ և զամ
զկահ նորա․ և եղիցին սրբութիւք։
*Եւ օծցես զսեղան ողջակիզացն՝ և 10
զամ զկահ նր։ *Եւ սրբեսցես զսե_ 11
ղանն՝ և եղիցի սեղանն սուրբ սրբու_
թեց։ և օծցես զաւազանն, և զխա_
րիսխն նորա՝ և սրբեսցես զնա։ *Եւ 12
մատուսցես զահարոն և զորդիս նորա
'ի դուռն խորանին վկայութե։ և լուա
ցես զնոսա ջրով։ *Եւ զգեցուսցես 13
ահարոնի զպատմուճանն սր․ և օծցես
զնա՝ և սրբեսցես զնա՝ և քահանայա_
ցի ինձ։ (և մատուսցես զորդիս նր․ և
զգեցուսցես նց պատմուճանս․ և օծ_
ցես զնոսա՝ զորօրինակ օծեր զհայրն
նց․ և քահանայասցին ինձ․) և եղի_
ցի նց օծումն քահանայութե 'ի յաւի
տեան և յազգս նոցա։ *Եւ արար 14
մովսէս ըստ ամի՝ զոր միանգամ պատ_
ուիրեաց նմա ԱԾ՝ նոյնպէս և արար։
*Եւ եղև յամսեանն առաջնում՝ ամի 15
երկրորդի ելանելոյ նց յերկրէն եգիպ
տացւոց, յամսամտին կանգնեցաւ խո
րանն։ *Եւ կանգնեաց մովսէս զխո_ 16 (Թուոց 7. 1.)
րանն՝ և եդ զխարիսխս նորա․ և կանգ
նեաց զսիւնս նորա․ և եդ 'ի վերայ
զխոյակս նր։ *Եւ պարզեաց զպար_ 17
զուանս նորա․ և տարածեաց զվեր_
նափեղկն 'ի վերայ խորանին․ և եարկ
զվերմակս խորանին 'ի վերայ նր, 'ի վե
րուստ։ և յօրինեաց զարտախուրակս
նորա․ ոպ հրամայեաց ԱԾ մովսէսի։
18 *Ե՛ւ էառ զվկայութիւնսն՝ և եդ 'ի
տապանակի անդ։ և եդ զնիգսն ընդ
տապանակաւն։ և եդ զքաւութիւն 'ի
19 վր տապանակին 'ի վերուստ։ *Եւ
տարաւ 'ի ներքս զտապանակն 'ի խո_
րանն․ և ձգեաց զպատրուակ վարա_
գուրին․ և ծածկեաց զտապանակն
վկայութե՝ զոր օրինակ հրամայեաց
20 ԱԾ մովսէսի։ *Եւ եդ զսեղանն 'ի խո_
րանին վկայութե 'ի հիւսիսոյ կողմանէ
խորանին, արտաքոյ վարագուրի խո_
21 րանին։ *Եւ յօրինեաց 'ի վերայ նր
զհացն երեսաց առաջի Տն, զորօրինակ
22 հրամայեաց Տր մովսէսի։ *Եւ եդ զաշ
տանակն 'ի խորանին վկայութե յան
դիման սեղանոյն․ 'ի հարաւոյ կողմա_
23 նէ խորանին։ *Եւ եդ զճրագարանսն
'ի վր նր առաջի Տն․ զորօրինակ հրա
24 մայեաց ԱԾ մովսէսի։ *Եւ եդ զսե_
ղանն ոսկի 'ի խորանին վկայութե՝ յան
25 դիման վարագուրին։ *Եւ եարկ
խունկ 'ի վր նր 'ի խնկոց համադրեա_
նացն՝ ոպ հրամայեաց ԱԾ մովսէսի։
26 *Եւ ձգեաց զսրահակ դրան խորանին։
27 *Եւ զսեղանն ողջակիզաց եդ առ
դրան խորանին՝ յարկի վկայութենն․
և եհան 'ի վր նր զողջակէզս և զոհս․
28 ոպ պատուիրեաց ԱԾ մովսէսի։ *Եւ
եդ զաւազանն ընդ խորան վկայու_
թենն՝ և ընդ սեղանն․ և եարկ 'ի նա
29 ջուր։ *Զի լուասցեն 'ի նմանէ մովսէս
և ահարոն, և որդիք նորա զձեռս և
30 զոտս իւրեանց։ *Յորժամ մտանիցեն
'ի խորանն վկայութե․ կամ յորժամ
մերձենայցեն 'ի սեղանն պաշտել․ և
լուանային 'ի նմանէ՝ որպէս և հրա_
31 մայեաց ԱԾ մովսէսի։ *Եւ կանգնեաց
զսրահն շուրջ զխորանաւն և զսեղա_
նովն․ և ձգեաց սրահակ դրան սրա_
հին։ և կատարեաց մովսէս զամենայն
32 զգործն։ *Եւ ծածկեաց ամպ զխո (Թուոց 9.15.)
րանն վկայութե։ և լի եղև փառօք
33 Տն խորանն։ *Եւ ոչ կարէր մովսէս (3. Թագ 8.10.)
մտանել 'ի խորանն վկայութեան․ զի
ծածկեաց զնա ամպն․ և լի՛ եղև փա_
34 ռօք Տն խորանն։ *Յորժամ վերանայր
ամպն 'ի խորանէ անտի՝ չուէին որ_
դիքն իսրայէլի համադերձ ամ աղխիւ
35 իւրեանց։ *Եւ եթէ ոչ վերանայր
ամպն՝ ոչ չուէին, մինչև յօրն վերա_
36 նալոյ։ *Զի ամպն Տն էր 'ի վերայ
խորանին 'ի տուէ․ և հուր կայր 'ի վր
նորա 'ի գիշերի․ առաջի ամ տանն
իսրայէլի, յամի չուս իւրեանց։



Եւ կոչեաց զՄովսէս, եւ խօսեցաւ ընդ նմա. 1.1.



Եւ ել հուր 'ի տեառնէ. եւ եկեր զողջակէզսն. 9.24.

# ԳԻՐՔ ՂԵՒՏԱԿԱՆՔ.

## ՈՐ ԱՍԻ ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑՒՈՑ ՎԱՅԻԿՐԱ.

Գլուխ Ա. Ողջակիզութիւնք.

1 ԵՒ ԿՈՉԵԱՑ ՏԷՐ զՄովսէս. եւ խօսեցաւ ընդ նմա 'ի խորանէ անտի վկայութեան եւ ասէ. 2 Խօսեաց դու ընդ որդիսդ Իսրայէլի, եւ ասասցես ցդոսա: * Այր ոք 'ի ձէնջ թէ մատուցանիցէ պատարագ Տն 'ի խաշանց. յարջառոյ կամ յոչխարէ մատուցանիցէք զպատարագս ձեր: 3 * Եթէ ողջակէզ իցէ պատարագն նորա, յարջառոց արու անարատ մատուսցէ: առ դուրս խորանին վկայութեան ածցէ զնա. ընդունելութիւն 'ի նմանէ առ 'ի քաւելոյ առաջի Տն:

|| Ելից. 29. 10.

4 * Եւ դիցէ զձեռն իւր 'ի վերայ գլխոյ ընծային, յընդունելութիւն նմա. առ 'ի քաւելոյ վասն անձին իւրոյ: 5 * Եւ սպանցեն զզուարակն առաջի Տն. եւ մատուսցեն քահանայքն որդիքն Ահարոնի զարիւնն. եւ հեղցեն շուրջ զսեղանովն՝ որ կայցէ առ դրան խորանին վկայութեան: 6 * Եւ մորթեսցեն զողջակէզն. եւ անդամ անդամ յօշեսցեն զնա: 7 * Եւ դիցեն որդիք Ահարոնի քահանայք հուր 'ի վերայ սեղանոյն. եւ կուտեսցեն փայտ 'ի վերայ հրոյն. եւ դիցեն որդիքն Ահարոնի քահանայք: 8 * Զանդամամթիւ. եւ զգլուխ եւ զճարպն 'ի վերայ փայտին. որ կայցէ 'ի վերայ հրոյ սեղանոյն: 9 * Եւ զփորոտին եւ զոտս լուասցեն ջրով: եւ դիցեն քահանայքն զամ 'ի վերայ սեղանոյն. զի ողջակէզ զոհի է 'ի հոտ անուշից Տն: 10 * Ապա թէ յոչխարաց իցէ պատա_

տարագն Ա.Յ, 'ի գառանց և յուլոց յողջակէզ, արու անարատ մատուսցանիցէ զնա։ 11 * Եւ դիցէ զձեռս իւր 'ի վր գլխոյ նր. և սպանցեն զնա 'ի կողմանց սեղանոյն ընդ հիւսիսի, առաջի Տն. և հեղցեն զարիւնն որդիքն Ահարոնի քահանայք շուրջ զսեղանովն։ 12 * Եւ յօշեսցեն զնա անդամ անդամ. և զգլուխն նր և զճարպ. և դիցեն զայն՝ քահանայքն 'ի վերայ փայտին և հրոյ՝ որ 'ի վր սեղանոյն իցէ։ 13 * Եւ զփորոտին և զոտս լուասցեն ջրով. և մատուսցէ քահանայն զամ և դիցէ 'ի վր սեղանոյն, զի ողջակէզ զոհի է 'ի հոտ անուշից Տն։ 14 * Իսկ եթէ 'ի թռչնոց յողջակէզ մատուցանիցէ պատարագ Ա.Յ, 'ի տատրակաց կամ յաղաւնեաց մատուսցէ զպատարագն իւր։ 15 * Եւ մատուսցէ զնա քահանայն առ սեղանն. և խառնեսցէ զգլուխ նր. և դիցէ քահանայն 'ի վերայ սեղանոյն. և քամեսցէ զարիւնն առ յատակաւ սեղանոյն։ 16 * Եւ կորզեսցէ զարմկունսն թեւօքն հանդերձ. և հանցէ զայն առ սեղանովն 'ի տեղի մոխրակուտին։ 17 * Եւ ջախջախեսցէ զայն 'ի թեւոցն. բայց մի՛ զատուսցէ։ և դիցէ զայն քահանայն 'ի սեղանն 'ի վր փայտի և հրոյ. զի ողջակէզ զոհի է 'ի հոտ անուշից Տն։

## Գլ. Բ.

1 Եւ անձն որ եթէ մատուցանիցէ պատարագ Տն, նաշիհ լիցի պատարագն նր։ և արկցէ զնովաւ իւղ. և դիցէ 'ի վերայ նր կնդրուկ՝ զի զոհ է։ 2 * Եւ տարցի զայն առ քահանայսն որդիս Ահարոնի. և լցեալ զձեռն իւր 'ի նաշհոյ անտի իւղովն հանդերձ. և զամ զկնդրուկն նորա, դիցէ քահանայն զյիշատակն նր 'ի վերայ սեղանոյն զոհ 'ի հոտ անուշից Տն։ 3 * Եւ զնշխարն 'ի զոհէ անտի՝ Ահարոնի և որդւոց իւրոց լիցի. սրբութի սրբութեց 'ի զոհից անտի Տն։ 4 * Ապա թէ մատուցանիցէ պատարագ զոհ եփեալ 'ի թոնրի. պատարագ 'ի նաշհոյ՝ պանս բաղարջս. 'ի նաշհոյ զանգեալ իւղով. և քաքարս բաղարջս օծեալ իւղով։ 5 * Իսկ եթէ զոհ 'ի տապակէ իցէ պատարագն քո, նաշիհ զանգեալ իւղով բաղարջ լինիցի։ 6 * Եւ բրդեսցես զայն պատառս պատառս. և արկցես 'ի վերայ նր իւղ. զի զոհ Տն է։ 7 * Ապա թէ զոհ 'ի կասկարայից իցէ պատարագն քո, նաշիհ իւղով գործեսցի։ 8 * Եւ մատուսցես զզոհն՝ զոր առնիցես 'ի նոցանէ Տն. և տարցիս առ քահանայն. և մատուցեալ քահանային առ սեղանն։ 9 * Հանցէ 'ի զոհէն զառ 'ի յիշատակէն նր. և դիցէ քահանայն 'ի վերայ սեղանոյն։ զի ընծայ անուշութե Տն է։ 10 * Եւ որ մնասցէ անտի, Ահարոնի և որդւոց իւրոց լիցի. սրբութի սրբութեց 'ի զոհից քոց։ 11 * Զամ զոհ՝ զոր մատուցանիցէք Տն ոչ առնիցէք խմորուն։ զամենայն խմորուն, և զամ մեղրեալ, մի՛ մատուցանիցէք 'ի նոցանէ պտուղ 'ի զոհ Տն։ 12 * Պատարագ պտղոյ մատուցանիցէք զայն Տն. բայց 'ի սեղանն մի՛ ելանիցէ 'ի հոտ անուշից Տն։ 13 * Եւ զամ պատարագ զոհից ձերոց աղիւ Տն յաղեսցի։ մի՛ պակասեցուցանիցէք զաղ ուխտին Ա.Յ 'ի զոհից ձերոց. ընդ ամենայն պատարագս մատուցանիցէք։ 14 * Իսկ եթէ զառաջին արմտեաց մատուցանիցես պատարագ Տն, մուրկ նոր փխրեալ և մաքրեալ՝ Տն մատուսցես զոհ զառաջնոց արմտեաց քոց։ 15 * Եւ արկցես 'ի նմա զիւղ. և դիցես 'ի վերայ նր զկնդրուկ, զի զոհ է։ 16 * Եւ հանցէ քահանայն զառ յիշատակէ նորա 'ի մրկաց անտի հանդերձ իւղովն. և զամ զկնդրուկն նորա՝ զի պտուղ Տն է։

## Գլ. Գ.

1 Ապա թէ զոհ փրկութե իցէ պատարագ նր Տն, եթէ յարջառոց մատուցանիցէ, եթէ արու իցէ՝ և եթէ էգ իցէ՝ զանարատն մատուսցէ առաջի Տն։ 2 * Եւ դիցէ զձեռս իւր 'ի վերայ գլխոյ պատարագին. և սպանցէ զնա առ դրան խորանին վկայութե։ և հեղցեն որդիքն Ահարոնի քահանայք զարիւնն 'ի վերայ սեղանոյ ողջակիզացն շուրջանակի։ 3 * Եւ մատուսցեն 'ի զոհէն փրկութե պտուղ Տն. զճարպ թաղանթ քաղրթին. և զամ ճարպ փորոտոյն։ 4 * Եւ զերկուս երիկամունսն և զճարպն 'ի նոսա՝ որ առ մանամեքն իցէ. և զբրդաբոյթն երիկամամբքն հանդերձ կորզեսցեն։ 5 * Եւ հանցեն զայն որդիքն Ահարոնի քահանայքն 'ի սեղանն յողջակէզս 'ի վերայ փայտի՝ և հրոյ՝ պտուղ անուշից Տն։ 6 * Ապա թէ յօդեաց իցէ պատարագն նր, զոհ փրկութե Տն. արու կամ էգ՝ անարատ մատուսցէ զայն։ 7 * Իսկ եթէ գառն մատուցանիցէ զպատարագն իւր, մատուսցէ զնա առաջի Տն։ 8 * Եւ դիցէ զձեռն իւր 'ի վերայ գլխոյ պատարագին իւրոյ, և սպանցէ զնա առ դրան խորանին վկայութե. և հեղցեն որդիքն Ահարոնի քահանայք զարիւնն շուրջ զսեղանովն։ 9 * Եւ մատուսցեն 'ի զոհէն փրկութե պտուղ Տն, զճարպն և զմիսն անարատ։ * Հան-

Սիրաք. 7.34.

Մարկ. 9.49.

Ելից 29.13.

10 *Հանդերձ զստօքն հանցէ 'ի նմանէ. եւ զճարպ զթաղանթ քաղրթին. եւ զամ ճարպ փորոտւոյն, եւ զերկոսին երիկամունսն, եւ զճարպն 'ի նոսա որ առ մանուածովքն. եւ զլերդաբոյթն հանդերձ երիկամամբքն: 11 *Կորզեալ հանցէ քահանայն 'ի սեղանն. հոտ անուշից պտուղ Տն: 12 *Իսկ եթէ յայծեաց իցէ պատարագն իւր, մատուսցէ առաջի Տն: 13 *Եւ դիցէ զձեռն իւր 'ի վերայ գլխոյ նորա. եւ սպանցեն զնա առաջի Տն առ դրան խորանին վկայութեան. եւ հեղցեն որդիքն ահարոնի քահանայք զարիւնն շուրջ զսեղանովն: 14 *Եւ հանցէ 'ի նմանէ պտուղ Տն զճարպն զթաղանթ քաղրթին. եւ զամ զճարպ փորոտւոյն 15 *Եւ զերկուս զերիկամունսն. եւ զճարպն 'ի նոսա՝ որ ընդ մանուածովքն. եւ զլերդաբոյթն երիկամամբքն հանդերձ կորզեսցէ: 16 *Եւ հանցէ քահանայն 'ի սեղանն պտուղ 'ի հոտ անուշից Տն. ամ ճարպ Տն եղիցի: 17 *Օրէն յաւիտենական յազգս ձեր. յամենայն բնակութեան ձերում. զամ ճարպ՝ եւ զամենայն արիւն մի ուտիցէք:

## ԳԼ: Դ:

1 Խօսեցաւ Տր ընդ Մովսիսի՝ եւ ասէ: 2 *Խօսեաց դու ընդ որդիսդ Իսրայէլի, եւ ասասցես: անձն եթէ մեղիցէ առաջի Տն ակամայ՝ յամ հրամանաց Տն յորոց չէ արժան առնել՝ եւ առնիցէ ինչ 'ի նոցանէ: 3 *Եթէ քահանայապետն օծեալ մեղանչիցէ առ 'ի զժողովուրդն յանցուցանելոյ, եւ մատուսցէ վն մեղաց իւրոց՝ զոր մեղաւ. զուարակ յանդոյ անարատ Տն վասն մեղաց: 4 *Եւ ածցէ զզուարակն 'ի դուռն խորանին վկայութեան առաջի Տն. եւ դիցէ զձեռս իւր 'ի վերայ գլխոյ զուարակին առաջի Տն: 5 *Եւ առեալ քահանայն օծելոյ կատարելոյ 'ի ձեռս իւր յարենէ զուարակին, եւ տարցի զայն 'ի խորանն վկայութեան: 6 *Եւ թացցէ քահանայն զմատն իւր յարեանն. եւ ցանեսցէ յարենէ անտի եօթն անգամ մատամբն իւրով, առաջի Տն առ վարագուրաւն սրբութեան: 7 *Եւ դիցէ քահանայն յարենէ զուարակին 'ի վերայ եղջերաց սեղանոյ խնկոցն հանդերձանաց առաջի Տն՝ որ իցէ 'ի խորանին վկայութեան: եւ զամ արիւն զուարակին հեղցէ առ յատակաւ սեղանոյն ողջակիզաց. որ կայցէ առ դրան խորանին վկայութեան: 8 *Եւ զամ ճարպ զուարակին մեղաց կորզեսցէ 'ի նմանէ. եւ զճարպ թաղանթ քաղրթին. եւ զամենայն զճարպ փորոտւոյն: 9 *Եւ զերիկամունսն երկոսին. եւ զճարպն 'ի նոսա որ առ մանուածովքն. եւ զլերդաբոյթն երիկամամբքն հանդերձ կորզեսցէ: 10 *Որպէս օրինակ առնուցու 'ի զուարակէ՝ զոհի փրկութեան. եւ հանցէ քահանայն 'ի սեղանն ողջակիզաց: 11 *Եւ զմորթ զուարակին եւ զամենայն մարմին նր հանդերձ գլխովն եւ ոտիւք. եւ քաղրթաւն եւ ապաճառաւ: 12 *Հանցեն ողջոյն ընդ զուարակն արտաքոյ բանակին 'ի տեղի մի սուրբ. ուր զմոխիրն հեղուցուն. եւ այրեսցեն զնա 'ի վն փայտի հրով. 'ի վերայ մոխրակուտին այրեսցի: 13 *Ապա թէ ամենայն ժողովուրդ որդւոցն Իսրայէլի անգիտանայցէ ակամայ. եւ մոռանայցի բանն յաչաց ժողովրդեանն. եւ առնիցեն ինչ մի յամ պատուիրանաց Տն, եւ յանցանիցեն, որ ոչ առնիցի: 14 *Եւ յայտնիցի նց մեղքն. որ մեղան նովաւ, մատուսցէ ժողովուրդն զուարակ անարատ յանդոյ վն մեղացն. եւ ածցէ զնա 'ի դուռն խորանին վկայութեան: 15 *Եւ դիցեն ծերք ժողովրդեանն զձեռս իւրեանց 'ի վերայ գլխոյ զուարակին առաջի Տն. եւ սպանցեն զզուարակն առաջի Տն: 16 *Եւ տարցի քահանայն օծեալ յարենէ զուարակին 'ի խորանն վկայութեան: 17 *Եւ թացցէ քահանայն զմատն իւր յարենէ զուարակին. եւ ցանեսցէ եօթնանգամ առաջի Տն յանդիման վարագուրին սրբութեան: 18 *Եւ դիցէ յարենէ անտի քահանայն 'ի վերայ եղջերաց սեղանոյն խնկոցն հանդերձանաց. որ կայցէ առաջի Տն 'ի խորանին վկայութեանն. եւ զամ զարիւնն հեղցէ առ յատակաւ սեղանոյն ողջակիզաց. որ է առ դրան խորանին վկայութեան: 19 *Եւ զամ զճարպն կորզեսցէ 'ի նմանէ՝ եւ հանցէ 'ի սեղանն: 20 *Եւ արասցէ զուարակին զոր օրինակ արար զուարակին մեղաց. նոյնպէս արասցէ եւ նմա. եւ քաւեսցէ վասն նց քահանայն. 21 եւ թողցին նց մեղքն: *Եւ հանցեն զզուարակն ողջոյն արտաքոյ բանակին. եւ այրեսցեն զզուարակն. զոր օրինակ այրեցին զառաջին զուարակն, զի վն մեղաց ժողովրդեանն է: 22 *Եւ եթէ իշխանն մեղիցէ. եւ արասցէ մի ինչ 'ի պատուիրանաց Տն Այ՝ որ ոչ առնիցի. եւ յանցանիցէ ակամայ: 23 *Եւ յայտնեսցին նմա մեղքն՝ զոր մեղաւ. մատուսցէ զպատարագն իւր 'ի նոխազաց յայծեաց արու անարատ: 24 *Եւ դիցէ զձեռս իւր 'ի վերայ գլխոյ նոխազին, եւ սպանցեն զնա 'ի տեղւոջ՝ յորում սպանանիցեն զողջակէզսն

առաջի

առաջի Տն. քանզի վասն մեղաց է:

25 *Եւ առցէ, և դիցէ քահանայն յարենէ անտի մեղացն՝ մատամբ իւրով 'ի վր եղջերաց սեղանոյ ողջակիզացն: և զամ արիւն նր հեղցէ առ յատակաւ սեղանոյ ողջակիզացն:

26 *Եւ զամենայն ճարպն նորա հանցէ 'ի սեղանն. իբրև զճարպ զոհի փրկութեն. և քաւեսցէ վասն նորա 'ի մեղաց անտի իւրոց՝ և թողցի նմա:

27 *Եւ եթէ մեղիցէ անձն ակամայ 'ի ժողովրդենէ երկրին. յառնել նմա մի ինչ յամ պատուիրանաց Տն որ ոչ առնիցի՝ և յանցանիցէ:

28 *Եւ յայտնիցին նմա մեղքն՝ զոր մեղաւ, մատուսցէ զպատարագ իւր այծ անարատ վասն մեղացն՝ զոր մեղաւ:

29 *Եւ դիցէ զձեռս իւր 'ի վերայ գլխոյ նր. և սպանցեն զայծն զվասն մեղացն 'ի տեղւոջն՝ ուր սպանանիցեն զողջակէզսն:

30 *Եւ առցէ քահանայն յարենէ նորա մատամբ իւրով. և դիցէ 'ի վր եղջերաց սեղանոյն ողջակիզաց: և զամ արիւն նորա հեղցէ առ յատակաւ սեղանոյ ողջակիզացն:

31 *Եւ զամ զճարպն կորզեսցէ՝ զոր օրինակ կորզիցի ճարպ յողջակիզէ փրկութեն. և հանցէ զայն քահանայն 'ի սեղանն 'ի հոտ անուշից Տն. և քաւեսցէ վասն նորա քահանայն՝ և թողցի նմա:

32 *Եւ եթէ ոչխար մատուցանիցէ զպատարագն իւր. էգ անարատ մատուսցէ զնա:

33 *Եւ դիցէ զձեռն իւր 'ի վերայ գլխոյ նորա՝ որ վասն մեղացն իցէ. և սպանցեն զնա 'ի տեղւոջն՝ ուր սպանանիցեն զողջակէզսն:

34 *Եւ առեալ քահանային յարենէ այնր՝ որ վն մեղացն իցէ, մատամբն իւրով դիցէ 'ի վր եղջերաց սեղանոյ ողջակիզացն. և զամ արիւն նորա հեղցէ առ յատակաւ սեղանոյ ողջակիզաց:

35 *Եւ զամ զճարպ նորա կորզեսցէ՝ զոր օրինակ կորզի ճարպ ոչխարին փրկութե: և դիցէ զայն քահանայն 'ի վերայ սեղանոյն յողջակէզ Տն. և քաւեսցէ վն նորա քահանայն 'ի մեղաց անտի՝ զոր մեղաւ. և թողցի նմա:

## ԳԼ: Ե:

1 Եւ եթէ մեղիցէ անձն՝ և լուիցէ զբարբառ երդման, և նա իցէ վկայ. կամ ետես. կամ եթէ իրազեկ իցէ, եթէ ոչ հանցէ 'ի վեր, մեղս ընկալցի:

2 *Եւ անձն որ մերձեսցի յիրս պղծութե. կամ 'ի մեռելոտի. կամ 'ի գազանաբեկ. կամ 'ի պիղծ ինչ. կամ 'ի մեռելոտիս անասնոց պղծոց. կամ 'ի մեռելոտիս սողնոց պղծոց. և անցանիցէ զնովաւ: և ինքն պղծիցի, և յանցանիցէ:

3 *Եւ մերձենայցէ 'ի պղծութիւն մարդոյ կամ յամ պղծութն նր, յոր եթէ մերձեցեալ պղծիցի՝ և մոռացմունք լինիցին նմա. և յետ այնորիկ 'ի վերայ հասանիցի՝ և յանցանիցէ:

4 *Եւ անձն որ ուխտիցէ չար ինչ առնել կամ բարի. ըստ ամի որինչ ուխտիցէ մարդ երդմամբ չափ. և մոռանայցի այն յաչաց նր. և ապա 'ի վերայ հասանիցի և մեղանչիցէ միով իւիք 'ի նցանէ:

5 *Եւ խոստովան լինիցի զմեղսն՝ զոր մեղաւ:

6 *Մատուսցէ վն յանցանացն՝ զոր յանցեաւ Տն. և վն մեղացն զոր մեղաւ, էգ յօդեաց որոջ. կամ այծ մի յայծեաց վն մեղացն. և քաւեսցէ վն նորա քահանայն 'ի մեղաց անտի. և թողցին նմա մեղքն:

7 *Իսկ եթէ չիցէ ձեռն հաս՝ լինել բաւական ոչխարաւ. մատուսցէ վասն մեղացն՝ զոր մեղաւ || երկուս տատրակս կամ երկուս || ձագս աղաւնւոյ. մի վն մեղացն՝ և մի յողջակէզ:

8 *Տարցէ առ քահանայն: և մատուսցէ քահանայն նախ զվն մեղացն. և խառեսցէ քահանայն զգլուխն յուլանէ անտի՝ և մի հատցէ:

9 *Եւ ցանեսցէ յարենէ անտի այնր՝ որ վասն մեղացն իցէ՝ զորմով սեղանոյն. և զմնացեալ արիւնն քամեսցէ առ յատակաւ սեղանոյն. քանզի վն մեղաց է:

10 *Եւ զերկրորդն արասցէ յողջակէզ՝ ոպ և օրէն իցէ. և քաւեսցէ վն նորա քահանայն ընդ մեղացն՝ զոր մեղաւ. և թողցի նմա:

11 *Եւ եթէ ոչ գտանիցէն ընդ ձեռամբ նր զոյգ տատրակաց՝ կամ երկու ձագք աղաւնեաց. բերցէ զպատարագն իւր վասն որոյ մեղաւն, զտասանորդ գրուի միոյ նաշիհ վասն մեղացն. և իւղ մի արկցէ 'ի նա. և կնդրուկ մի դիցէ 'ի վերայ նր՝ զի վն մեղաց է:

12 *Եւ տարցի զայն առ քահանայն. և առեալ քահանային 'ի նմանէ լի ափով զառ 'ի յիշատակէն նր, դիցէ 'ի վերայ սեղանոյ ողջակիզաց Տն. քանզի վասն մեղաց է:

13 *Եւ քաւեսցէ վն նորա քահանայն զմեղսն՝ որ մեղաւ՝ որով իւիք և իցէ 'ի նոցանէ. և թողցի նմա. և մնացեալն քահանային եղիցի իբրև զզոհ նաշհոյն:

14 *Խօսեցաւ տէր ընդ Մովսէսի՝ և ասէ.

15 *Անձն ոք եթէ վրիպեսցի՝ և մեղիցէ ակամայ 'ի սրբութենէ անտի Տն. մատուսցէ վասն յանցանացն իւրոց Տն զխոյ անարատ յօդեաց՝ գնոց արծաթոյ 'ի սիկղս սիկղս ըստ սրբութե սիկղին:

16 *Եւ զոր յանցուցեալն իցէ. և զոր մեղաւն 'ի սրբութիւնն հատուսցէ. և զհինգերորդ ևս մասն յաւելցէ 'ի նոյն. և տացէ ցքահանայն. և քաւեսցէ

'ի նմա.

Ղեւտ. 12.8.

Ղուկ. 2.24.

'ի նմանէ քահանայն խոյիւն՝ որ վասն յանցանացն իցէ՝ եւ թողցի նմա։ 17 *Եւ անձն որ մեղիցէ. եւ արասցէ մի ինչ յամի պատուիրանաց Տն՝ զոր չիցէ պարտ առնել. եւ ոչ իմանայցէ՝ եւ յանցանիցէ, եւ ընդունիցի մեղս։ 18 *Ածցէ խոյ անարատ 'ի խաշանց՝ գնոց արծաթոյ վն յանցութեն, առ քահանայն. եւ քաւեսցէ վասն նորա քահանայն՝ վն անգիտութեն, զոր անգիտացաւ՝ եւ ինքն ոչ գիտէր. եւ թողցի նմա։ 19 *Քանզի յանցեաւ յանցութի յանցանաց առաջի Տն։

## Գլ. Օ.

1 Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ եւ ասէ. 2 *Անձն որ եթէ մեղիցէ. եւ արհամարհելով արհամարհիցէ զպատուիրանս Տն. եւ ստեսցէ ընկերի իւրում. եթէ յաւանդի. եւ թէ 'ի զօրութե. եւ եթէ 'ի յափշտակութե. եւ եթէ զրկեսցէ ինչ ընկերի իւրում։ 3 *Եւ եթէ եգիտ կորուստ ինչ՝ եւ ժխտիցէ 'ի վերայ նր. եւ երդնուցու սուտ վասն միոյ իրիք՝ յամէ զոր եւ առնիցէ մարդ։ 4 *Եւ 'ի մեղանչելոյ նր նոքօք. եւ եղիցի յորժամ մեղանչիցէ՝ եւ յանցանիցէ. եւ հատուսցէ զյափշտակութիւն՝ զոր յափշտակեաց։ 5 *Կամ զզրկանսն՝ զոր զրկեաց. կամ զաւանդն՝ զոր աւանդեցաւ նմա. կամ զկորուստն՝ զոր եգիտ յամ իրաց. վասն որոյ երդուաւ սուտ, տուժեսցի զգլուխն. || եւ զհինգերորդ մասն յաւելցէ 'ի նոյն. եւ ոյր իցէ հատուսցէ նմա՝ յաւուր յորում յանդիմանիցի։ 6 *Եւ ընդ յանցանաց իւրոց մատուցանիցէ Տն խոյ անարատ 'ի հօտից՝ գնոց արծաթոյ. վասն որոյ յանցեաւն։ 7 *Եւ քաւեսցէ վն նր քահանայն առաջի Տն. եւ թողցի նմա վն միոյ իրիք՝ յամէ զոր արար՝ եւ յանցեաւ նա։ 8 *Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ եւ ասէ։ 9 *Պատուէր տուր Ահարոնի եւ որդւոց նր՝ եւ ասասցես. այս օրէն է ողջակիզին վն այրելոյ նր 'ի վերայ սեղանոյն. զամ գիշերն մինչեւ ցառաւօտ. եւ հուր սեղանոյն՝ որ այրիցի 'ի վերայ նր՝ մի շիջցի։ 10 *Եւ զգեցցի քահանայն պատմուճան կտաւի. եւ անդրավարտիս կտաւիս զգեցցի 'ի վն մարմնոյ իւրոյ՝ եւ հանցէ զընծայս ողջակիզին 'ի սեղանոյն՝ զոր հուրն ծախիցէ. եւ դիցէ առ ընթեր սեղանոյն։ 11 *Եւ մերկասցի զպատմուճանն իւր՝ եւ զգեցցի այլ պատմուճան. եւ հանցէ զողջակէզն արտաքոյ բանակին 'ի տեղի սուրբ։ 12 *Եւ հուրն՝ որ այրիցի 'ի վն սեղանոյն՝ մի շիջցի. եւ այրեսցէ 'ի վերայ նր քահանայն փայտ ընդ առաւօտս. եւ դիցէ 'ի վն նորա զողջակէզն. եւ դիցէ 'ի նմա զճարպ փրկութեն։ 13 *Եւ հուր հանապազ այրեսցի 'ի վն սեղանոյն՝ եւ մի շիջցի։ 14 *Եւ այս օրէն է զոհին՝ զոր մատուցանիցեն որդիքն Ահարոնի քահանայքն առաջի Տն՝ յանդիման սեղանոյն։ 15 *Առցէ ափով իւրով 'ի նաշհոյ զոհին հանդերձ եղովն նորա՝ եւ կնդրկաւ՝ որ իցէ 'ի վն զոհին. եւ հանցէ 'ի սեղանն պտուղ 'ի հոտ անուշից յիշատակ նր Տն։ 16 *Եւ զմնացեալն 'ի նմանէ կերիցէ Ահարոն եւ որդիք նր. բաղարջ կերիցի 'ի սուրբ տեղւոջ. 'ի սրահի խորանին վկայութե կերիցեն զնա։ 17 *Ոչ եփեսցի խմորեալ. մասն ետու զայն նոցա 'ի պտղոյն Տն. սրբութիւնք սրբութեց են. որպէս վասն մեղացն իցէ, նոյնպէս եւ վն յանցանացն։ 18 *Ամենայն արու քահանայից կերիցեն զնա. օրէն յաւիտենական յազգս ձեր. 'ի պտղոյ անտի Տն՝ ամ որ մերձեսցի 'ի նոսա սրբեսցի։ 19 *Խօսեցաւ 20 Տր ընդ Մովսէսի՝ եւ ասէ։ *Այս է պատարագ Ահարոնի եւ որդւոյն նր՝ զոր մատուցանիցեն Տն յաւուր յորում օծանիցես զնա. զտասանորդ գրուի միոյ նաշհոյ զոհ հանապազորդ. զկէս նորա այգուն. եւ զկէս նորա երեկոյին։ 21 *'Ի տապակի իւղով զանգեալ գործեսցի. եւ մատուսցէ զայն մաքրեալ. զոհ 'ի պատառոյ. զոհ 'ի հոտ անուշից 22 Տն։ *Քահանայն օծեալ փոխանակ նր յորդւոց իւրոց արասցէ զայն՝ օրէն յաւիտենական Տն ամենեւին կատարեսցի։ 23 *Եւ ամենայն զոհ քահանայի ողջակէզ լինիցի. եւ մի ուտիցի։ 24 *Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ եւ ասէ։ 25 *Խօսեաց ընդ Ահարոնի եւ ընդ որդիս նր՝ եւ ասասցես. այս օրէն իցէ վն մեղուցելոյն։ 'ի տեղւոջ ուր սպանանիցեն զողջակէզն. սպանցեն եւ զվն մեղացն առաջի Տն. սրբութի սրբութեց է։ 26 *Քահանայն որ մատուցանիցէ զայն, կերիցէ. 'ի սբ տեղւոջ կերիցէ. 'ի սրահի խորանին վկայութե։ 27 *Ամ որ մերձենայցէ 'ի միս նորա՝ սրբեսցի. եւ յոյր ձորձոյ վերայ սրսկեսցի 'ի նմանէ արեան, լուասցի 'ի սբ տեղւոջ։ 28 *Եւ աման կաւեղէն յորում եփեսցի, փշրեսցի. եւ եթէ 'ի պղնձի ամանի եփեսցի, քերեսցէ զնա՝ եւ ջրով ողողեսցէ։ 29 *Ամենայն արու քահանայից կերիցէ զայն. սրբութի սրբութեց է Տն։ 30 *Եւ ամ վասն մեղացն || որոց մտանիցէ յարենէ նց 'ի խորանն վկայութե քաւել 'ի սրբութիւնս. մի կերիցի, այլ հրով այրեսցի։

|| Թուոց 5. 7.

|| Վեր. 4. 5. Եբրայ. 13. 11.

## ԳԼ. Է.

1 Եւ այս օրէնք է խոյին որ վն յանցանացն իցէ. զի սրբութիւն սրբութեանց է. 2 *'Ի տեղւոջ ուր սպանանիցեն զողջակէզսն . սպանցեն զխոյն յանցանաց առաջի Տն. և զարիւնն հեղցէ առ յատակաւ սեղանոյն շուրջանակի. 3 *Եւ զամ զճարպ նր առցէ, և զմկանն . և զամ զճարպ թաղանթ քաղրթին. և զամ զճարպ փորոտւոյն. 4 *Եւ զերիկամունսն զերկոսին . և զճարպն որ 'ի վերայ նոցա առ մանամբքն . և զլերդաւբոյթն երիկամամբքն հանդերձ կորզեսցէ. 5 *Եւ հանցէ զայն քահանայն 'ի սեղանն պտուղ Տեառն՝ զի վասն յանցանաց է. 6 *Ամենայն արուք քահանայից կերիցեն զայն . 'ի սուրբ տեղւոջ կերիցեն զայն . քանզի սրբութիւն սրբութեանց է. 7 *Որպէս զվասն մեղացն, նոյնպէս և զվն յանցանացն . օրէնք մի և նոյն կայցէ նց . և քահանայն՝ որ քաւիցէ նովաւ՝ նմա լիցի. 8 *Եւ քահանայն՝ որ մատուցանիցէ զողջակէզս ինչ մարդոյ, մորթ ողջակիզին՝ զոր մատուցանիցէ նմա եղիցի. 9 *Եւ ամ զոհ՝ որ գործիցի 'ի թոնրի . և ամ որ գործիցի 'ի կասկարայս՝ կամ 'ի տապակի, քահանային՝ որ մատուցանիցէ զայն՝ եղիցի. 10 *Եւ ամ զոհ զանգեալ իւղով՝ և որ չիցէ զանգեալ . ամենեցուն որդւոցն Ահարոնի իւրաքանչիւրումեք եղիցի հաւասարակ. 11 *Այս օրէնք է զոհիցն փրկութեան զոր մատուցանիցեն Տեառն. 12 *Իսկ թէ վասն գոհութեան մատուցանիցէ զայն . մատուսցէ վն զոհի գոհութեան . պանս բաղարջս 'ի նաշհոյ զանգեալ իւղով . և քաքարս բաղարջս օծեալ իւղով . և նաշիհ զանգեալ իւղով . շօթիւք բաղարջ. 13 *Հացիւ մատուսցէ զպատարագն իւր . 'ի վերայ զոհին գոհութեան փրկութեան . և մատուսցէ մի ինչ յամ պատարագաց իւրոց նուէր Տն. 14 *Եւ այն՝ քահանային որ հեղուցու զարիւնն փրկութեան լինիցի . և միս զոհին գոհութեան փրկութեան նորին լինիցի. 15 *Յորում աւուր պատարագիցի կերիցի . և մի թողուցուն 'ի նմանէ յայգ. 16 *Եւ եթէ կամաւ ուխտս մատուցանիցէ զպատարագն իւր . յաւուր յորում մատուցանիցէ զզոհն՝ կերիցի . և 'ի վաղիւ անդր մնացեալն ուտիցի 'ի մսոյ զոհին. 17 *Մինչև ցօրն երրորդ՝ հրով այրեսցի. 18 *Ապա թէ որ ուտելով ուտիցէ 'ի մսոյ զոհին փրկութեան իւրոյ յաւուրն երրորդի . մի լինիցի ընդունելի մատուցանելւոյն . և մի համարեսցի նմա այն . քանզի ապախտ և պղծութիւն է . և անձն որ կերիցէ 'ի նմանէ՝ մեղս առցէ. 19 *Եւ միս որ մերձեսցի յամ պղծութիւն, մի կերիցի, այլ հրով այրեսցի . ամ սուրբ կերիցէ զմիսն. 20 *Եւ անձն որ կերիցէ 'ի զոհէ փրկութեան՝ որ իցէ Տն . և պղծութիւն նորա 'ի նմա իցէ, կորիցէ անձն այն 'ի ժողովրդենէ իւրմէ. 21 *Եւ անձն որ մերձեսցի յամ իրս պղծութեան . 'ի պղծութիւնս մարդոյ . կամ յանասնոց պղծոյ . կամ յամ գարշելիս պիղծս . և կերիցէ 'ի մսոյ զոհին փրկութեան . որ իցէ Տեառն, կորիցէ անձն այն 'ի ժողովրդենէ իւրմէ. 22 *Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ասէ. 23 *Խօսեաց ընդ որդիսդ Իղի և ասասցես . զամ զճարպ զարջառոյ և զոչխարի և զայծեաց մի ուտիցէք. 24 *Եւ ճարպ մեռելոտւոյ և գազանաբեկաց՝ լինիցի յամ գործ . բայց 'ի կերակուր մի ուտիցի. 25 *Եւ ամենայն որ ուտիցէ 'ի ճարպոյ անասնոց՝ զոր մատուցանէք պտուղ Տն, կորիցէ անձն այն 'ի ժողովրդենէ իւրմէ. 26 *Ամ արիւն մի ուտիցէք յամ բնակութիւնս ձեր . 'ի թռչնոց և յամ անասնոց. 27 *Ամ անձն որ կերիցէ արիւն՝ կորիցէ 'ի ժողովրդենէ իւրմէ. 28 *Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ասէ. 29 *Խօսեաց ընդ որդիսդ Իղի՝ և ասասցես . որ մատուցանիցէ զզոհ փրկութեան Տն . ածցէ զպատարագ իւր Տն 'ի զոհէ փրկութեան իւրոյ. 30 *Ձեռք նր մատուսցեն պտուղ . զճարպ երբծոյն՝ և զլերդաբոյթն մատուսցէ դնել առաջի Տն. 31 *Եւ հանցէ զայն քահանայն 'ի սեղանն . և եղիցի երբուծն Ահարոնի և որդւոց նր. 32 *Եւ զերին զաջոյ տայցէք հասս քահանայնին 'ի զոհից փրկութեան ձերոց. 33 *Որ մատուցանիցէ զարիւնն փրկութեան և զճարպն առ 'ի յորդւոցն Ահարոնի, նր լիցի երին աջոյ 'ի մասն. 34 *Զի զերբուծն վերադրաց՝ և զերի նուիրացն առի ես յորդւոցն Իղի 'ի զոհից փրկութեան ձերոց . և ետու զայն Ահարոնի քահանայի, և որդւոց նր . օրէնք յաւիտենական յորդւոցն Իսրայէլի. 35 *Այս օծումն է Ահարոնի և որդւոց նորա . 'ի պտղոց անտի Տն . յաւուր յորում մատուցանէր զնոսա՝ ոճ և պատուիրեաց Տր տալ նց. 36 *Յաւուր յորում օծ զնս յորդւոցն Իսրայէլի . օրէնք յաւիտենականս յազգս նոցա. 37 *Այս է օրէնք ողջակիզացն և զոհից . և վասն մեղացն և վն յանցանաց . և վն կատարմանն՝ և զոհին փրկութեան. 38 *Որպէս պատուիրեաց Տէր Մովսէսի 'ի լերինն Սինայ.

սինայ . յաւուր յորում պատուիրեաց Տր որդւոցն Իսրայէլի . մատուցանել զպատարագս իւրեանց առաջի Տն . յանապատին սինայ ։

## ԳԼ ։ Ը. ։

1 Խօսեցաւ Տր ընդ Մովսիսի՝ եւ ասէ ։ 2 *Ա՛ռ զԱհարոն եւ զորդիս նր . եւ զպատմուճանս նց . զիւղն օծութեան . եւ զզուարակն զվասն մեղաց . եւ զխոյսն զերկոսին . եւ զխանն բաղարջոյ ։ 3 *Եւ զա՛մ զժողովուրդն եկեղեցացուսցես 'ի դուռն խորանին վկայութեան ։ 4 *Եւ արար Մովսէս՝ ո՛րպէս հրամայեաց նմա Տր ։ եւ եկեղեցացոյց զժողովուրդն 'ի խորանն վկայութեան ։ 5 *Եւ ասէ Մովսէս ցժողովուրդն ։ այս բան է՝ զոր պատուիրեաց Տէր առնել ։ 6 *Եւ մատոյց Մովսէս զԱհարոն եւ զորդիս նր . եւ լուա՛ց զնս ջրով ։ 7 *Եւ զգեցոյց Ահարոնի զպատմուճանն . եւ էած ընդ մէջ նր զկամարն . եւ եարկ զնովաւ զվտաւակսն . եւ եդ 'ի վերայ նորա զվակասն ։ 8 *Եւ խառնեաց 'ի նմա ըստ գործուածոյ վակասին . եւ սնտեաց զնա 'ի նմա . եւ եդ 'ի վերայ նր զտախտակն . եւ եդ 'ի վր տախտակին զյայտնութիւն եւ զճշմարտութիւն ։ 9 *Եւ եդ 'ի վերայ գլխոյ նր զխոյրն՝ եւ եդ 'ի վր խուրին յերեսաց կողմանէ զթիթեղն ոսկի զնուիրեալն եւ զսուրբ . ո՛րպէս պատուիրեաց Տր Մովսիսի ։ 10 *Եւ առեալ Մովսիսի յիւղոյ օծութեան . եւ ցանեաց 'ի վերայ սեղանոյն եօթն անգամ ։ 11 *Եւ էօծ զսեղանն . եւ սրբեաց զնա եւ զա՛մ սպասս նր ։ եւ զաւազանն եւ զխարիսխն նորա . եւ սրբեաց զնոսա . եւ էօծ զխորանն եւ զա՛մ ինչ որ 'ի նմա՝ եւ սրբեաց զնա ։ 12 *Եւ եարկ Մովսէս յիւղոյ օծութեան 'ի գլուխն Ահարոնի . եւ էօծ զնա եւ սրբեաց զնա ։ 13 *Եւ մատոյց Մովսէս զորդիսն Ահարոնի ։ եւ զգեցոյց նց զպատմուճանսն . եւ էած ընդ մէջ նց զկամարսն՝ եւ եդ նց զխոյրսն . ո՛րպէս եհրամայեաց Տր Մովսիսի ։ 14 *Եւ մատոյց Մովսէս զզուարակն զվն մեղացն . եւ եդին Ահարոն եւ որդիք նր զձեռս իւրեանց 'ի վերայ գլխոյ զուարակին մեղաց ։ 15 *Եւ էառ Մովսէս յարենէ անտի՝ եւ եդ 'ի վերայ եղջերաց սեղանոյն շուրջանակի մատամբ իւրով . եւ սրբեաց զսեղանն ։ եւ զարիւնն եհեղ առ յատակաւ սեղանոյն ։ 16 *Եւ սրբեաց զնա առնել քաւութիւն 'ի վերայ նր ։ եւ էառ զա՛մ ճարպ փորոտւոյն . եւ զլերդաբոյթն եւ զերկոսին զերիկամունսն . եւ զա՛մ ճարպն որ 'ի վերայ նց . եւ եհան Մովսէս 'ի սեղանն ։ 17 *Եւ զզուարակն եւ զկաշի նորա . եւ զմիսն՝ եւ զապաւառն

ծը

այրեաց հրով արտաքոյ բանակին . ո՛րպէս հրամայեաց Տր Մովսիսի ։ 18 *Եւ մատոյց Մովսէս զխոյն որ յողջակէզ . եւ եդին Ահարոն եւ որդիք նր զձեռս իւրեանց 'ի վերայ գլխոյ խոյին ։ 19 *Եւ սպան Մովսէս զխոյն . եւ եհեղ զարիւնն շուրջ զսեղանովն ։ 20 *Եւ զխոյն յօշեաց ընդ անդամ անդամ ։ եւ էառ Մովսէս զգլուխն եւ զանդամաթիւսն եւ զճարպն եւ զքաղիրթն եւ զոտսն ։ 21 *Եւ լուա՛ց ջրով . եւ եհան Մովսէս զխոյն զողջոյն 'ի սեղանն յողջակէզ . որ 'ի հոտ անուշից . քանզի պտուղ Տն է՝ ո՛րպէս հրամայեաց Տր Մովսէսի ։ 22 *Եւ մատոյց Մովսէս զխոյն երկրորդ՝ զխոյն կատարմանն . եւ եդին Ահարոն եւ որդիք նորա զձեռս իւրեանց 'ի վր գլխոյ խոյին ։ 23 *Եւ սպանին զնա ։ եւ էառ Մովսէս յարենէ նր . եւ եդ 'ի վր բլթակի աջոյ ունկանն Ահարոնի՝ եւ 'ի վերայ ծայրի աջոյ ձեռին նր . եւ 'ի վր ծայրի աջոյ ոտին նր ։ 24 *Եւ մատոյց Մովսէս զորդիսն Ահարոնի . եւ եդ Մովսէս յարենէ անտի 'ի վր բլթակաց աջուց ականջաց նց . եւ 'ի վերայ ծայրից աջուց ձեռաց նց . եւ 'ի վերայ ծայրից աջուց ոտից նոցա ։ եւ եհեղ Մովսէս զարիւնն շուրջ զսեղանովն ։ 25 *Եւ էառ զճարպն եւ զմիկանն . եւ զճարպն որ 'ի վերայ քաղիրթին եւ զլերդաբոյթն . եւ զերիկամունսն զերկոսին . եւ զճարպն որ 'ի վր նոցա . եւ զերին զաջոյ ։ 26 *Եւ 'ի խանէն կատարմանն որ կայր առաջի Տն, էառ նկան մի բաղարջ՝ եւ նկան մի յիւղոյ անտի . եւ եդ 'ի վերայ ճարպոյն . եւ 'ի վերայ երւոյն աջոյ ։ 27 *Եւ եդ զա՛մ 'ի վր ձեռացն Ահարոնի . եւ 'ի վերայ ձեռաց որդւոց նր . եւ մատոյց զայն նուէր առաջի Տն ։ 28 *Եւ էառ զայն Մովսէս 'ի ձեռաց նց . եւ եհան 'ի սեղանն յողջակէզ կատարման . որ է 'ի հոտ անուշից պտուղ Տն՝ ո՛րպէս պատուիրեաց Տէր ։ 29 *Եւ առեալ Մովսիսի զերբուծն եւ եհան նուէր առաջի Տն 'ի խոյէ անտի կատարմանն . եւ եղեւ Մովսիսի 'ի մասն, ո՛րպէս պատուիրեաց Տր Մովսիսի ։ 30 *Եւ առեալ Մովսէս յիւղոյ օծութեան . եւ յարենէն որ 'ի վերայ սեղանոյն . եւ ցանեաց զԱհարոնիւ եւ զպատմուճանօք նր ։ եւ զորդւովք նորա եւ զպատմուճանօք նոցա ։ 31 *Եւ սրբեաց զԱհարոն եւ զպատմուճանս նր . եւ զորդիս նորա եւ զպատմուճանս որդւոց նր ը նմա ։ եւ ասէ Մովսէս ցԱհարոն եւ ցորդիս նր . եփեցէք զմիսդ 'ի սրահի խորանին վկայութեան 'ի սուրբ տեղւոջ . եւ անդ ուտիցէք զայն . եւ զհացն որք 'ի խանի կատարմանն իցեն . զոր օրինակ հրամայեաց ինձ Տէր՝ եւ ասէ . ‖ Ահարոն եւ որդիք նր կերիցեն զայն ։

‖ Ելից. 29.32. Ղեւտ. 24.9.

N *Եւ

32 *Եւ զմնացեալ հացի և մսոյ հրով այրեսջիք ։ 33 *Եւ 'ի դրանէ խորանին վկայութեան մի՛ ելանիցէք զեօթն օր. մինչև յօր լրման աւուրց կատարմանն ձերոյ. զի զեօթն օր լցցէ զձեռս ձեր ։ 34 *Ոպ և արարն յաւուր յայնմիկ. ոպ պատուիրեաց Տէր առնել առ 'ի քաւելոյ վն ձեր ։ 35 *Եւ առ դրան խորանին վկայութեան նստիցիք զեօթն օր. զցայգ և զցերեկ. և պահեսջիք զպահպանութիւնս Տն. զի մի՛ մեռանիցիք. զի այնպէս պատուիրեաց ինձ Տէր ։ 36 *Եւ արար ահարոն և որդիք նորա զամ զբանս՝ զոր պատուիրեաց Տէր մովսէսի ։

## ԳԼ ։ Թ ։

1 Եւ եղև յաւուրն եօթներորդի. կոչեաց մովսէս զահարոն և զորդիս նր և զծերակոյտն իՂի. և ասէ մովսէս ցահարոն. 2 *‖ Առ դու քեզ զուարակ մի յանդէոյ վն մեղաց. և խոյ յողջակէզ անարատս. և մատո զնս առաջի Տն ։ 3 *Եւ ընդ ծերակոյտն իսրայէլի խօսեսցիս՝ և ասասցես. առէք դուք ձեզ զնոխազ մի յայծեաց վն մեղաց. և զուարակ՝ և գառն տարևոր յողջակէզ անարատս ։ 4 *Եւ զուարակ և խոյ յողջակէզ փրկութեան առաջի Տն. և զոհ նաշիհ զանգեալ իւղով. զի այսօր երևեսցի Տէր 'ի միջի ձերում ։ 5 *Եւ առին՝ ոպ և հրամայեաց մովսէս առաջի խորանին վկայութեան. և մատեան ամ ժողովուրդն. և կացին առաջի Տն ։ 6 *Եւ ասէ մովսէս. այս բան է՝ զոր ասաց Տր առնել. և երևեսցին 'ի ձեզ փառք Տն ։ 7 *Եւ ասէ մովսէս ցահարոն. մատիր առ սեղանն. և արա զվասն մեղացն քո. և զողջակէզն քո. քաւեա վն քո և տան քոյ՝ և արա զպատարագս ժողովրդեան քոյ. և քաւեա վասն նոցա՝ ոպ պատուիրեաց Տէր ։ 8 *Եւ մատեաւ ահարոն առ սեղանն. և սպան զզուարակն զվն մեղացն իւրոց ։ 9 *Եւ մատուցին որդիքն ահարոնի զարիւնն առ նա ։ և եթաց զմատն յարեանն. և եդ 'ի վերայ եղջերաց սեղանոյն. և զարիւնն եհեղ առ յատակաւ սեղանոյն ։ 10 *Եւ զճարպն և զերիկամունսն և զլերդաբոյթն զվասն մեղաց եհան 'ի սեղանն. որպէս պատուիրեաց Տէր մովսէսի ։ 11 *Եւ զմիսն և զկաշին այրեցին հրով արտաքոյ բանակին ։ 12 *Եւ սպան զողջակէզն. և մատուցին որդիքն ահարոնի զարիւնն առ նա. և եհեղ շուրջ զսեղանովն ։ 13 *Եւ զողջակէզն մատուցին առ նա անդամ անդամ և զգլուխն՝ եդ 'ի վն սեղանոյն ։ 14 *Եւ լուաց զքաղիրթն և զոտս ջրով. և եդ 'ի վերայ ողջակիզին 'ի սեղանն ։ 15 *Եւ մատուցին զպատարագ ժողովրդեանն. և էառ զնոխազն զվասն մեղաց ժողովրդեանն. և սպան զնա իբրև զառաջինն ։ 16 *Եւ մատոյց զողջակէզն ։ 17 *Եւ արար զնա՝ որպէս և օրէն էր. և մատոյց զզոհն, և ելից զձեռս 'ի նմանէ. և եդ 'ի վերայ սեղանոյն՝ ուրոյն յառաւօտուն յողջակիզէ ։ 18 *Եւ սպան զզուարակն և զխոյն զոհի փրկութեան ժողովրդեանն. և մատուցին որդիքն ահարոնի զարիւնն առ նա. և եհեղ զայն շուրջ զսեղանովն ։ 19 *Եւ զճարպն որ 'ի զուարակէն. և 'ի խոյէն զմկանն. և զճարպ թաղանթ քաղրթին. և զերկոսին երիկամունսն ճարպովն. և զլերդաբոյթն ։ 20 *Եւ եդին զճարպն 'ի վերայ երբծոյն. և հանին զճարպն հանդերձ երբծօքն. և եդին զճարպն 'ի վերայ սեղանոյն ։ 21 *Եւ զեր բուծսն և զերին զաջու, նուիրեաց նուէր առաջի Տն ոպ պատուիրեաց Տէր մովսէսի ։ 22 *Եւ ամբարձեալ ահարոնի ձեռս իւր 'ի վն ժողովրդեանն՝ օրհնեաց զնս. և էջ՝ արար զվասն մեղացն. և զողջակէզսն և զփրկութեանն ։ 23 *Եւ մտին մովսէս և ահարոն 'ի խորանն վկայութեան՝ և ելեալ անտի օրհնեցին զամ ժողովուրդն ։ ‖ Եւ երևեցաւ փառք Տն ամենայն ժողովրդեանն ։ 24 *Եւ ել հուր 'ի Տէ և եկեր որինչ կայր 'ի վերայ սեղանոյն. զողջակէզսն. և զճարպսն. և ետես ամենայն ժողովուրդն՝ և զարհուրեցան. և անկան 'ի վերայ երեսաց իւրեանց ։

‖ Ելից 29.1.

‖ 2. Մն 2.10.

## ԳԼ ։ Ժ ։

1 Եւ առեալ երկուց որդւոցն ահարոնի. նադաբայ և աբիուդայ զիւրաքանչիւր բուրվառ ‖ եդին 'ի նս հուր՝ և արկին խունկս. և մատուցին առաջի Տն հուր օտար. զոր ոչ հրամայեաց նոցա Տր ։ 2 *Եւ ել հուր 'ի Տէ և եկեր զնոսա. և մեռան առաջի Տն ։ 3 *Եւ ասէ մովսէս ցահարոն. այս է՝ զոր ասաց Տր. ասէ՝ 'ի մերձաւորս իմ սրբեցայց. և առաջի ամ ժողովրդեանն փառաւորեցայց. ստորջացաւ ահարոն ։ 4 *Եւ կոչեաց մովսէս զմիսադայի և զեղիսափան որդիս ոզիէլի՝ զորդիս հօրեղբօր ահարոնի. և ասէ ցնոսա. մատիք, և բարձէք զեղբարս ձեր հանդերձ պատմուճանօքն իւրեանց, յերեսաց սրբութեանց արտաքոյ քան զբանակն ։ 5 *Մատեան և բարձին զնոսա հանդերձ պատմուճանօքն իւրեանց արտաքոյ բանակին. զորօրինակ ասաց մովսէս ։ 6 *Եւ ասէ մովսէս ցահարոն, և

‖ Թուոց 3. 4. և 26.61. 1. Մնաց 24.2.

ցեղիա-

ցեղիազար, և ցիթամար, յորդիսն նր մնացեալս. զգլուխս ձեր մի՛ ապախու_
րէք. և զհանդերձս ձեր մի՛ պատառէք. զի մի՛ մեռանիցիք՝ և 'ի վերայ ժողո_
վրդեանդ լինիցի բարկութի. բայց եղբարք ձեր և ամ տունն իսրայէլի
լացցեն զհրայրեացն՝ որք այրեցան 'ի Տէ: *Եւ 'ի դրանէ խորանին վկայ_ 7
ութե մի՛ ելանիցէք՝ զի մի՛ մեռանի_ ցիք. զի իւղն օծութե որ 'ի Տէ է՝ 'ի
վերայ ձեր է. և արարին ըստ բանին մովսէսի: *Խօսեցաւ Տէր ընդ ահարո 8
նի՝ և ասէ: *Գինի և ցքի մի՛ ըմպի_ 9 ցէք դու և որդիք քո ընդ քեզ՝ յորժամ
մտանիցէք 'ի խորանն վկայութեան. կամյորժամ մերձենայցէք 'ի սեղանն.
զի մի՛ մեռանիցիք. օրէն յաւիտենա կան յազգս ձեր: *Զատանել 'ի մէջ 10
սրբոց և պղծոց. և 'ի մէջ պարկեշտից և անպարկեշտաց: *Եւ իմացուցա_ 11
նել իսրայէլի զամ զօրէնս՝ զորս խօ_ սեցաւ Տր ընդ նոսա 'ի ձեռն մովսէսի:
*Եւ ասէ մովսէս ցահարոն՝ և ցեղիա 12 զար՝ և ցիթամար՝ յորդիսն նր ցմնա_
ցեալս. առէք զզոհն մնացեալ 'ի պտղոց անտի Տն. և կերիջիք բաղարջ առաջի
սեղանոյն. զի սրբութի սրբութեանց է: *Եւ կերիջիք զայն 'ի սուրբ տեղւոջ. 13
զի օրէն քեզ լինիցի այն. և օրէն որդ_ ւոց քոց 'ի պտղոց անտի. զի որպէս
հրամայեալ է ինձ Տն: *Զերբուծ 14 նուէրին, և զերի հասին կերիջիք 'ի
սբ տեղւոջ դու և որդիք քո, և տուն քո ընդ քեզ. զի օրէն քեզ է այն. և
օրէն որդւոց քոց տուեալ 'ի զոհից փր_ կութեանց որդւոցն իսրայէլի:* Զերին 15
հասի. և զերբուծն նուէրի 'ի վերայ ընծայիցն ճարպոց մատուցեն, նուէ_
րս նուիրել առաջի Տն, և եղիցի քեզ՝ և որդւոց քոց. և դստերաց քոց
ընդ քեզ՝ օրէն յաւիտենական՝ զոր_ օրինակ հրամայեաց Տէր մովսէսի:

‖2.Մն. 2.11.

*‖ Եւ զնոխազն զվն մեղացն խնդրե 16 լով խնդրեաց մովսէս. և այն էր այրե_
ցեալ. և բարկացաւ մովսէս եղիազա րու և իթամարայ, որդւոցն ահարոնի
մնացելոց: *Եւ ասէ՝ ընդէ՞ր ոչ կե_ 17 րայք զվն մեղացն 'ի սուրբ տեղւոջն.
զի սրբութի սրբութեանց է՝ և զայն ե_ տու ձեզ ուտել՝ զի բառնայցէք զմեղս
ժողովրդեանն. և առնիցէք զքաւու_ թի վասն նց առաջի Տն: *Քանզի 18
ոչ եմուտ յարենէ նորա 'ի սրբութին յանդիման երեսացն 'ի ներքս. արդ
կերայք զնա 'ի սբ տեղւոջ՝ զորօրինակ հրամայեցաւ ինձ: *Խօսեցաւ ահա_ 19
րոն ընդ մովսէսի՝ և ասէ. զի եթէ այս_ օր մատուցին զվասն մեղացն իւրեանց.



և զողջակէզս իւրեանց առաջի Տն և այսպիսի անցք անցին ընդ իս՝ ուտի_
ցեմ այսօր զվասն մեղացն, դուցէ 20 չլինիցի հաճոյ առաջի Տն: *Եւ լուաւ
մովսէս՝ և հաճոյ թուեցաւ նմա:

## Գլ: ԺԱ:

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ընդ 2 ահարոնի՝ և ասէ: *Խօսեցարուք
ընդ որդիսդ իսրայէլի՝ և ասացէք. ‖ այս անասունք են՝ զորս ուտիցէք՝ յամ
անասնոց որք են 'ի վերայ երկրի:

‖2.Օրէ 14.3.

3 * Զամ անասուն թաթահերձ և կճղակաւոր. որոյ յերկուս բաժանեալ
իցեն թաթքն՝ և որոճիցէ (յանասնոց 4 զայն) կերիջիք: *Բայց յայնցանէ մի՛
ուտիցէք՝ որք որոճիցեն և կճղակա_ հերձք ոչ իցեն: ուղտ, զի որոճայ՝ և
կճղակն ոչ բաժանի. պիղծ իցէ նա 5 ձեզ: *Եւ նապաստակ, զի որոճայ՝ և
թաթն ոչ բաժանի՝ պիղծ իցէ նա 6 ձեզ: * Եւ ճագար, զի որոճայ՝ և
թաթն ոչ բաժանի պիղծ իցէ նա ձեզ: 7 * ‖ Եւ խոզ՝ զի թաթահերձ է՝ և
կճղակս ունի՝ և որոճայ ոչ, պիղծ իցէ 8 նա ձեզ: *'Ի մսոյ նց մի՛ ուտիցէք. և
'ի դիէշ նոցա մի՛ մերձենայցէք՝ քանզի 9 պիղծ իցէ ձեզ այն: *Եւ այս է՝ զոր
ուտիցէք՝ յամէ որք 'ի ջուրս իցեն՝ ա_ մենայնի որոյ իցեն թեւք և թեփ 'ի
ջուրս և 'ի ծովս և 'ի վտակս՝ զայնս 10 ուտիցէք: *Եւ ամի որոյ ոչ իցեն թեւք
և թեփ 'ի ջուրս և 'ի ծովս և 'ի վտակս՝ մի՛ ուտիցէք. յամէ զոր ջուրքն բղխե_
ցեն, և յամէ շնչոյ կենդանւոյ՝ որ 'ի ջուրս. քանզի պիղծ է այն՝ պիղծ լի_
11 նիցի ձեզ: *'Ի մսոց նոցա մի՛ ուտիցէք. 12 և 'ի մեռելոց նց գարշիջիք: * Զի ամի
որոյ ոչ իցեն թեւք և թեփ որ 'ի ջուրս 13 իցեն՝ պիղծ իցէ ձեզ այն: * Եւ այսք
իցեն 'ի թռչնոց՝ յորոց գարշիջիք՝ և ոչ ուտիցին՝ այլ պիղծ իցէ ձեզ. ար_
14 ծուի, պասկուճ. և գետարծուի: *Եւ անգղ. և ցին. և որինչ նման իցէ նոցա:
15 *Եւ ագռաւ՝ և որինչ նման իցէ նմա: 16 *Եւ ջայլամն՝ և բու. և որոր. և որինչ
17 նման իցէ նոցա: *Եւ բազէ. և որինչ նման իցէ նմա. և հաւպատր. և հողա
18 մաղ: *Եւ քաջահաւ. և սոխակ. և 19 հաւալուսն. և կարապ: * Եւ արա_
գիլ. և քարարդ. և որինչ նման իցէ նց. 20 և յոպոպ. և չղջիկ: * Եւ ամ զեռուն
թռչնոց՝ որ գնայցէ 'ի չորս՝ պիղծ ե_ 21 ղիցի ձեզ: * Բայց զայն ուտիցէք 'ի
զեռնոց թռչնոց, որք գնայցեն 'ի չորս. որոյ իցեն կարթք 'ի վերայ քան զոտս.
22 ոստոստել նոքօք յերկրէ: *Եւ այս իցէ զոր ուտիցէք 'ի նոցանէ. զջորեակդ.

‖2.Մակ. 6.18.

և որ ինչ նմանն է նմա. և զխարագուլն
և որ ինչ նմանն է նմա. և զմարախն և
որ ինչ նմանն է նմա. (և զօձամարտն և
որ ինչ նման իցէ նմա։) 23 *Այլ ամե-
նայն զեռնոյ, թռչնոյ, որոյ իցեն չորք
ոտք՝ պիղծ իցէ ձեզ. մի՛ նոքօք պղծի-
ցիք։ 24 *Ամենայն որ մերձենայցէ 'ի մե-
ռեալ նց՝ պիղծ լիցի մինչև ցերեկոյ։
25 *Այլ ամ որ բառնայցէ զմեռեալ նո-
ցա՝ լուասցէ զձորձս իւր՝ և պիղծ լիցի
մինչև ցերեկոյ։ 26 *Յամենայն անասնոյ
որ կճղակահերձ իցէ, և որոճիցէ ոչ՝
պիղծ լիցի ձեզ այն ամենայն. որ մեր-
ձեսցի 'ի մեռեալ նց՝ պիղծ լիցի մինչև
ցերեկոյ։ 27 *Այլ ամենայն որ գնայցէ
'ի ձեռս իւր. յամենայն գազանաց որ
գնայցէ 'ի չորս, պիղծ լիցի ձեզ այն.
ամ որ մերձեսցի 'ի մեռեալ նոցա՝
պիղծ լիցի մինչև ցերեկոյ։ 28 *Այլ որ
բառնայցէ 'ի մեռելոյ նոցա՝ լուասցէ
զձորձս իւր. և պիղծ լիցի մինչև ցե-
րեկոյ՝ զի ամենայն պիղծ իցէ ձեզ։
29 *Այլ այս իցէ ձեզ պիղծ յամ սողնոց՝
որք սողիցին 'ի վերայ երկրի. աքիս՝ և
մուկն. և տխտեռն՝ յաստին։ 30 *Այլ մկնա-
քիս՝ և գետնառիւծ. և կողադիայ. և
մողէս. և խլուրդ։ 31 *Այն ամ պիղծ
իցէ ձեզ, յամ սողնոց որք սողիցին 'ի
վերայ երկրի. ամ որ մերձեսցի 'ի մե-
ռեալ նց՝ պիղծ լիցի մինչև ցերեկոյ։
32 *Այլ յամի յորոյ վերայ անկանիցի 'ի
մեռելոյ նոցա՝ պիղծ լիցի՝ յամենայն
փայտեղէն անօթոյ, կամ 'ի հանդեր-
ձոյ՝ կամ 'ի մաշկէ՝ կամ 'ի քրձէ, ամ
անօթ յորում գործ ինչ գործիցի 'ի
նմա 'ի ջուր թացցի՝ և պիղծ լիցի մին
չև ցերեկոյ. և ապա սուրբ լինիցի։
33 *Այլ ամ անօթ խեցեղէն յոր անկա-
նիցի ինչ 'ի նոցանէ. և որ ինչ 'ի ներքսն
կայցէ, պիղծ լիցի. և զայն բեկանիցէք։
34 *Այլ ամենայն կերակուր որ ուտիցի՝
և անկանիցի 'ի վերայ նր 'ի ջրոյ ան-
տի՝ պիղծ լիցի. և ամենայն ըմպելի
որ ըմպիցի յամ ամանի՝ պիղծ լիցի։
35 *Այլ յամ յոր ինչ անկանիցի 'ի մեռե-
լոյ նոցա՝ պիղծ լիցի. և թոնիրք՝ և
կասկարայք քակեսցին. քանզի պղ-
ծեալք են. և պիղծք իցեն ձեզ։ 36 *Բայց
յաղբերաց ջրոց. և 'ի ջրհորոց. և 'ի
ջրակուտաց. որք սուրբք լինիցին ձեզ.
և ամ որ մերձենայցէ 'ի պղծութիւ
ննչոյ մեռելոյ նց, պիղծ լիցի։ 37 *Իսկ
եթէ անկանիցի ինչ 'ի մեռելոյ նոցա
'ի վերայ ամենայն սերման սերմանե-
լոյ՝ որ սերմանիցի. սուրբ լիցի։
38 *Ապա թէ հեղանիցի ջուր 'ի վերայ
ամ սերման. և անկանիցի ինչ անդր
'ի մեռելոյ նոցա, անսբ լիցի ձեզ։

39 *Այլ եթէ մեռանիցի ինչ յանասնոց
որ ձեր ուտելի է, որ մերձենայցէ 'ի
մեռեալ նոցա՝ պիղծ լիցի մինչև ցե-
րեկոյ։ 40 *Այլ որ ուտիցէ 'ի նմանէ՝ և
որ բառնայցէ 'ի մեռելոյ նց՝ լուասցէ
զձորձս իւր. և պղծեալ լիցի մինչև
ցերեկոյ։ 41 *Այլ ամ սողուն որ սողի 'ի
վերայ երկրի՝ պիղծ լիցի ձեզ. և մի՛
կերիցի ամ՝ որ սողի 'ի վերայ որո-
վայնի իւրոյ։ 42 *Այլ ամ որ գնայցէ
'ի չորս մինչև ցամենայն բազմոտանիս
յամ զեռնոց՝ որք զեռայցեն 'ի վերայ
երկրի, մի՛ ուտիցէք. զի պիղծ է այն
ձեզ։ 43 *Այլ մի՛ գարշեցուցանիցէք զան-
ձինս ձեր ամ սողնօք, որք սողիցին 'ի
վերայ երկրի. և մի՛ պղծիցիք նոքօք.
44 և մի՛ լինիցիք անսուրբք նոքօք։ *Ես
եմ Տր Ած ձեր. և սրբիջիք՝ ‖ և սուրբք ‖1.Պետ.
լինիջիք. զի սուրբ եմ ես Տր Ած ձեր՝ 1.16.
և մի՛ պղծիցէք զանձինս ձեր ամ զեռ-
նօք՝ որք շարժիցին 'ի վերայ երկրի։
45 *Զի ես եմ Տր Ած, որ հանի զձեզ
յերկրէն եգիպտացւոց լինել ձեր Ած՝
և եղիջիք սուրբք՝ զի ես սբ եմ։
46 *Այս օրէն լինիցի վասն անասնոց և
ամ շնչոյ՝ որ շրջիցի 'ի ջուրս. և ամ
շնչոյ՝ որ շրջիցի 'ի վերայ երկրի։
47 *Որոշել 'ի մէջ սրբոյն և 'ի մէջ անսր
բոյ. խելամուտ առնել զորդիսդ Իղի.
'ի մէջ ուտելեացն կենդանեածնաց.
և 'ի մէջ չուտելեաց անասնոց։

## ԳԼ. ԺԲ.

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ։
2 *Խօսեա՛ց ընդ որդիսն իսրայե-
լի՝ և ասասցես ցնոսա ‖ կին որ եթէ ‖Ղուկ.
սերմն առցէ և ծնանիցի արու. պիղծ 2.22.
լիցի զեօթն օր, ըստ աւուրս զատման
3 լոյ դաշտանին իւրոյ պիղծ լիցի։ *‖Այլ ‖Յոհ.
յաւուրն ութերորդի թլփատեսցէ 7. 22.
4 զմարմին անթլփատութե նր։ *Այլ Ղուկ.
զերեսուն և զերիս աւուրս նստցի 'ի 2.21.
վր սրբոյ արեան իւրոյ. յամ ինչ սբ
նա մի՛ մերձենայցէ. և 'ի սրբութիւնն
մի՛ մտցէ՝ մինչև լցցին աւուրք սրբու-
5 թե նորա։ *Ապա թէ էգ ծնանիցի՝
պիղծ լիցի զեօթն օր ըստ դաշտանին.
զվաթսուն և զվեց օր նստցի 'ի սուրբ
6 արեանն իւրում։ *Այլ յորժամ լնա-
նիցին աւուրք սրբութե նորա 'ի վր
ուստերն՝ կամ դստեր, ածցէ զգառն
տարևոր յողջակէզ. և զձագ աղաւ-
նւոյ կամ տատրակի վասն մեղացն 'ի
դուռն խորանին վկայութե առ քա-
7 հանայն։ *Այլ մատուսցէ առաջի Տն.
և քաւեսցէ վն նորա քահանայն. և սր
բեսցէ զնա յաղբերէ արեան նր. այս
օրէն իցէ այնորիկ՝ որ ծնանիցի զարու
կամ

կամ ղեգ։ 8 *Ապա թէ ոչ գտանիցէ ձեռն նորա բաւական լինել գառամբ. առցէ երկուս տատրակս կամ երկուս ձագս աղաւնեաց. զմին յողջակէզ. և զմիւսն վասն մեղաց. քաւեսցէ վասն նորա քահանայն, և սրբեսցի։

Մ եր. 5. 7. և 11. Ղուկ. 2.24.

## ԳԼ. ԺԳ.

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ և ընդ Ահարոնի. և ասէ. 2 *Մարդոյ ուրուք եթէ լինիցի 'ի մորթ մարմնոյ իւրոյ նշան սպւոյ. կամ պալար՝ կամ պաղպաջ՝ և լինի 'ի մորթ մարմնոյ նորա արած բորոտութեան. եկեսցէ առ Ահարոն քահանայ. կամ առ մի յորդւոց նորա քահանայից։ 3 *Եւ տեսցէ քահանայն զարածն 'ի մորթ մարմնոյ նորա. և կամ թէ մազ արածին 'ի սպիտակ դարձեալ իցէ. և տեսիլ արածին զնստագոյն իցէ քան զմորթ մարմնոյն. արած բորոտութեան է. և տեսցէ քահանայն՝ և պղծեսցէ զնա։ 4 *Ապա թէ պաղպաջն սպիտակ իցէ 'ի մորթ մարմնոյ նորա. և զնստագոյն չիցէ տեսիլն նորա քան զմորթն, և մազն սպիտակ չիցէ դարձեալ, և ինքն շլագոյն իցէ, զատուսցէ քահանայն զարածն զեօթն օր։ 5 *Եւ տեսցէ քահանայն յաւուրն եօթներորդի, եթէ կայցէ նոյնպէս արածն առաջի նորա. և չիցէ փոխեալ արածն 'ի մորթն՝ զատուսցէ զնա քահանայն այլեւս աւուրս եօթն. 6 *Եւ տեսցէ քահանայն յաւուրն եօթներորդի միւսանգամ. և ահա շլագոյն իցէ արածն՝ և յայլագոյն չիցէ փոխեալ 'ի մորթն, սրբեսցէ զնա քահանայն. զի նշան ինչ է այն. և լուացեալ զձորձս իւր եղիցի սուրբ։ 7 *Ապա թէ շրջելով շրջիցի նշանն 'ի մորթն, յետ տեսանելոյ զնա քահանային՝ և սրբելոյ. և երևեսցի միւսանգամ քահանային. և տեսցէ քահանայն և ահա այլագունեալ իցէ նշանն 'ի մորթն. 8 *Պղծեսցէ զնա քահանայն՝ զի բորոտութիւն է։ 9 *Եւ արած բորոտութեան եթէ լինիցի մարդոյ՝ եկեսցէ առ Ահարոն քահանայ։ 10 *Եւ տեսցէ քահանայն. և ահա պալար սպիտակ իցէ 'ի մորթն. մազ նորա 'ի սպիտակ դարձեալ իցէ. և յառողջ է կենդանի մարմնոյ 'ի պալարն. 11 *Բորոտութիւն հնացեալ է 'ի մորթ մարմնոյ նորա. պղծեսցէ զնա քահանայն. և զատուսցէ զնա՝ զի պիղծ է։ 12 *Ապա թէ սփռելով սփռեսցի բորոտութիւն ընդ մորթն. և ծածկեսցէ բորոտութիւն զամենայն մորթ իրանացն, 'ի գլխոյ մինչև ցոտս ըստ ամենայն տեսոյ քահանային. 13 *Եւ տեսանիցէ քահանայն՝ և ահա ծածկեաց բորոտութիւն զամ մորթ մարմնոյն, սրբեսցէ քահանայն զարածն. քանզի ամենայն 'ի սպիտակ դարձաւ, սուրբ է։ 14 *Եւ յորում աւուր երևեսցի 'ի նմա մարմին կենդանի, պղծեսցի։ 15 *Եւ տեսցէ քահանայն զմարմինն կենդանի. և պղծեսցէ զողջ մարմինն. և պիղծ լիցի՝ քանզի բորոտութիւն է։ 16 *Ապա թէ անդրէն հաստատեսցի մարմինն ողջ, և դարձցի 'ի սպիտակ։ 17 *Եկեսցէ առ քահանայն. և տեսանիցէ զնա քահանայն. և ահա դարձեալ իցէ արածն նորա 'ի սպիտակ, սրբեսցէ քահանայն զարածն՝ քանզի սուրբ է։ 18 *Եւ մարդոյ եթէ լինիցի 'ի մորթ նորա կեղ՝ և ողջասցի. 19 *Եւ եղիցի 'ի տեղի կեղոյն սպիտակ փայլուն լնացեալ կամ կարմրացեալ. և երևեսցի քահանային։ 20 *Եւ տեսանիցէ քահանայն. և ահա տեսիլն խորագոյն քան զմարմինն իցէ, և մազն 'ի սպիտակ դարձեալ իցէ, պղծեսցէ զնա քահանայն՝ զի բորոտութիւն է ընդ կեղոյն բորբոքեալ։ 21 *Իսկ եթէ տեսանիցէ քահանայն՝ և չիցէ 'ի նմա մազ սպիտակ. և ոչ խորագոյն իցէ քան զմարմինն՝ և ինքն շլագոյն իցէ, զատուսցէ զնա քահանայն զեօթն օր։ 22 *Եթէ սփռեսցի ընդ մորթն՝ պղծեսցէ զնա քահանայն՝ քանզի արած բորոտութեան ընդ կեղոյն բորբոքեցաւ։ 23 *Ապա թէ անդէն 'ի տեղւոջ կացցէ փայլունն՝ և ոչ տարածեսցի. սպի կեղոյն է. սրբեսցէ զնա քահանայն։ 24 *Եւ մարմնոյ եթէ լինիցի 'ի մորթ նորա այրեցած հրոյ. և լինիցի ողջացեալ մորթ նորա յայրեցածէ անտի. և լինիցի փայլուն՝ կամ պաղպաջ սպիտակ. կամ կարմրացեալ՝ կամ լնացեալ։ 25 *Եւ տեսանիցէ զնա քահանայն. և ահա փոխեալ իցէ մազն 'ի սպիտակ 'ի փայլունն. և տեսիլ նորա զիջագոյն իցէ քան զմորթն՝ բորոտութիւն է ընդ այրեցածին բորբոքեալ. և պղծեսցէ զնա քահանայն՝ զի արած բորոտութեան է։ 26 *Եւ եթէ տեսանիցէ քահանայն՝ և ահա չիցէ 'ի նմա փայլուն ինչ՝ կամ մազ սպիտակ. և ոչ զնստագոյն քան զմորթն. բայց շլագոյն իցէ. զատուսցէ զնա քահանայն զեօթն օր։ 27 *Եւ տեսցէ քահանայն յաւուրն եօթներորդի. եթէ սփռելով սփռեալ իցէ ընդ մորթն՝ պղծեսցէ զնա քահանայն՝ զի արած բորոտութեան է ընդ կեղոյն բորբոքեալ։ 28 *Եւ եթէ 'ի նմին տեղւոջ կայցէ փայլունն. և ոչ սփռիցի ընդ մորթն. և ինքն շլագոյն իցէ. սպի այրեցածոյն է. սրբեսցէ զնա քահանայն՝

զի

զի գլխոյն այրեցածոյն է։ * Այլ առն 29
կամ կնոջ, եթէ լինիցի արած բորո-
տութեն 'ի գլուխ՝ կամ 'ի մօրուս. և
տեսանիցէ քահանայն զարածն։ * Այլ 30
ահա տեսիլ նր ընտատագոյն իցէ քան
զմորթն. և 'ի նմա մազ աղուամազ
խարտեշացեալ, պղծեսցէ զնա քահա-
նայն. քանզի հարած է. բորոտութի
գլխոյ է. կամ բորոտութի մօրուաց։
* Այլ եթէ տեսանիցէ քահանայն զա- 31
րած հարածոյն. և ահա չիցէ ընտատա-
գոյն տեսիլն քան զմորթն. և ոչ մազ
խարտեշացեալ 'ի նմա. զատուսցէ քա-
հանայն զարած հարածին զեօթն օր։
* Այլ տեսանիցէ քահանայն զարածն 32
յաւուրն եօթներորդի՝ և ահա չիցէ
տարածեալ հարածն. և մազ խար-
տեշացեալ չիցէ 'ի նմա. և ոչ տեսիլ
հարածոյն ընտատագոյն իցէ քան ըզ-
մորթն։ * Գերծցէ զնա. բայց զհա- 33
րածն մի գերծցէ. և զատուսցէ քահա-
նայն զարածն զեօթն օր կրկին ան-
գամ։ * Այլ տեսանիցէ քահանայն 34
զարածն յաւուրն եօթներորդի. և ա-
հա չիցէ սփռեալ հարածն ընդ մորթն՝
յետ գերծանելոյն զնա. և տեսիլ հա-
րածոյն չիցէ ընտատագոյն քան զմորթն,
սրբեսցէ զնա քահանայն. և լուացեալ
զձորձս իւր եղիցի սուրբ։ * Ապա թէ 35
սփռելով սփռիցի հարածն ընդ մորթն
յետ գերծելոյն զնա, և տեսանիցէ
զնա քահանայն. և ահա սփռեալ իցէ
հարածն ընդ մորթն։ * Մի՛ դարմա- 36
նեսցէ քահանայն վս խարտեաշ մա-
զոյն՝ զի պիղծ է։ * Իսկ եթէ կայցէ 37
'ի տեղւոջ հարածն. և մազ թուխ ե-
կեսցէ 'ի նմա, ողջացաւ հարածն.
սուրբ է. և սրբեսցէ զնա քահանայն։
* Այլ առն՝ կամ կնոջ եթէ լինիցի 'ի 38
մորթ մարմնոյ իւրոյ փայլուն ինչ՝ փայ-
լածուն լնացեալ։ * Այլ տեսանիցէ 39
քահանայն. և ահա 'ի մորթ մարմնոյ
նր փայլուն փայլածուն լնացեալ թէ
փուք է տարածեալ 'ի մորթ մարմնոյ
իւրոյ. սբ է։ * Այլ եթէ մաշտեսցի 40
գլուխ ուրուք. կունտ է՝ սբ է։ * Այլ 41
եթէ յերեսաց կողմանէ մաշտիցի
գլուխ նր, ճաղատ է՝ սբ է։ * Ապա թէ լի- 42
նիցի 'ի կնտութեն նր կամ 'ի ճաղատութեն
արած սպիտակ կամ կարմրացեալ,
բորոտութի թաքուցեալ է 'ի կնտու-
թեն նր. կամ 'ի ճաղատութեն։ * Այլ տե- 43
սանիցէ զայն քահանայն. և ահա տե-
սիլ արածին սպիտակ իցէ. կամ կար-
մրագոյն 'ի կնտութեն նր. կամ 'ի ճա-
ղատութեն իբրև զտեսիլ բորոտութեն 'ի
մորթ մարմնոյ նր. այր բորոտեալ է՝
պիղծ է. պղծելով պղծեսցէ զնա քա-
հանայն. զի 'ի գլուխ իւրում է արածն
44 իւր։ * Այլ բորոտ յորում իցէ արած.
45 * Հանդերձն նորա քակեալ լիցի. և
գլուխ նր մերկ. և զբերան իւր պա-
46 տեսցէ. և պիղծ կոչեսցի։ * Զամ
աւուրս որչափ իցէ 'ի նմա արածն՝
պիղծ եղիցի. և պիղծ է. մեկնեալ
նստցի. և արտաքոյ բանակին եղիցի
47 բնակութի նր։ * Այլ ձորձ յորում լի-
նիցի արած բորոտութեն եթէ 'ի ձորձ
48 ասուեի. և եթէ 'ի ձորձ կտաւի։ * Եթէ
յառէջ եթէ 'ի թեզանս. եթէ 'ի կտա-
ւիս՝ և եթէ յասուեիս. եթէ 'ի մորթ.
49 և եթէ յամ մաշկ գործոյ։ * Այլ լինի-
ցի արածն կանաչացեալ կամ կարմ-
րացեալ. 'ի մորթ կամ 'ի հանդերձ.
կամ յառէջ կամ 'ի թեզանս. կամ յամ
մորթ գործոյ՝ կամ յանօթ ինչ՝ արած
բորոտութեան իցէ. և ցուցցէ քահա-
50 նային։ * Այլ տեսցէ քահանայն զա-
րածն. և զատուսցէ քահանայն զա-
51 րածն զեօթն օր։ * Այլ տեսցէ քահա-
նայն զարածն յաւուրն եօթներորդի.
եթէ սփռեալ իցէ արածն ընդ ձորձն՝
(կամ ընդ առէջ՝ կամ ընդ թեզանն. կամ
ընդ կտաւիս՝ կամ ընդ ասուեիս. կամ
ընդ մորթ. ըստ ամի որպէս և գործի-
ցի մորթն 'ի գործ) բնակ բորոտութի
52 է արածն. պիղծ է։ * Այլ այրեսցէ
զձորձսն (եթէ առէջ իցէ՝ և եթէ թե-
զան յասուեաց կամ 'ի կտաւեաց. կամ
յամ մաշկեղէն նիւթոյ. յորում իցէ
արածն. քանզի բնակ բորոտութի է
53 հրով այրեսցի)։ * Ապա թէ տեսանի-
ցէ քահանայն՝ և չիցէ սփռեալ արածն
ընդ հանդերձն կամ ընդ առէջն՝ կամ
ընդ թեզանն. կամ ընդ ասրն՝ և ընդ
կտաւ. կամ ընդ ամ անօթ մաշկեղէն։
54 * Հրաման տայցէ քահանայն. և լուա-
ցեն՝ յորում իցէ արածն. և զատուսցէ
քահանայն զարածն զեօթն օր երկիցս
55 անգամ։ * Այլ տեսցէ քահանայն յետ
լուանալոյ զարածն. եթէ չիցէ փո-
խեալ տեսիլ արածին. և ոչ սփռեալ
իցէ արածն, հրով այրեսցի. զի հաս-
տատեալ է 'ի հանդերձին. կամ յա-
56 ռէջն կամ 'ի թեզանն։ * Այլ եթէ տե-
սանիցէ քահանայն՝ և շլագոյն իցէ ա-
րածն յետ լուանալոյն զնա, պատա-
ռեսցէ զայն 'ի հանդերձէ անտի. կամ
'ի մորթենն. կամ յառէջէ՝ կամ 'ի թե-
57 զանոյ։ * Ապա թէ դարձեալ երևես-
ցի 'ի հանդերձին. կամ յառէջն, կամ
'ի թեզանն՝ կամ յամ անօթ մաշկե-
ղէն, բորոտութի բորբոքեալ է. հրով
այրեսցի՝ յորում իցէ արածն. եթէ
հանդերձ իցէ՝ և եթէ առէջ՝ և եթէ
58 թեզան։ * Այլ եթէ ամ անօթ մաշկե-
ղէն

ղէն որ լուանայցի՛ եւ ելանիցէ 'ի նմանէ արածն, կրկին լուասցի՝ եւ սբ լիցի։ 59 *Այս օրէն իցէ արածի բորոտութե ասուէայ հանդերձի. կամ կտաւոյ՝ կամ առէջոյ. կամ թեզանոյ՝ կամ ամենայն մաշկեղէն անօթոյ 'ի սրբել կամ 'ի պղծել զնա։

## ԳԼ ։ ԺԴ.

Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՛ եւ ասէ. 1 *Այս օրէն եղիցի բորոտի՛ յաւուր յորում սրբիցի. ‖ածցի առ քահանայն։ 2 *Եւ ելցէ քահանայն արտաքոյ բանակին. եւ տեսանիցէ քահանայն՝ եւ ահա բժշկեալ իցէ արած բորոտութեն 'ի բորոտէ անտի։ 3 *‖Հրաման տայցէ քահանայն՝ եւ առցեն 'ի սրբեցելոյն երկուս հաւս կենդանիս սբս՝ եւ փայտ եղեւնեայ՝ եւ կարմիր մանեալ՝ եւ զոպայ։ 4 *Եւ հրաման տացէ քահանայն՝ եւ սպանցեն զմի հաւն յանօթխեցեղէն. 'ի վն ջրոյ կենդանւոյ։ 5 *Եւ զհաւն կենդանի առցէ՝ եւ զփայտն եղեւնեայ, եւ զկարմիրն մանեալ եւ զզոպայն՝ եւ թացցէ զնս, եւ զհաւն կենդանի յարիւն հաւուն սպանելոյ 'ի վերայ ջրոյն կենդանւոյ։ 6 *Եւ ցանեսցէ 'ի վն սրբեցելոյն 'ի բորոտութե եօթն անգամ. եւ սրբեսցէ զնա։ եւ արձակեսցէ զհաւն կենդանի 'ի դաշտ։ 7 *Եւ լուասցէ սրբեալն զձորձս իւր. եւ գերծցէ զամ զմազ իւր. եւ լուասցի ջրով. եւ սուրբ լիցի։ եւ ապա մտցէ 'ի բանակն. եւ լիցի արտաքոյ տան իւրոյ զեօթն օր։ 8 *Եւ յաւուրն եօթներորդի գերծցէ զամ զմազ իւր. եւ զգլուխ եւ զմօրուս եւ զյօնս. եւ զամ զմազ իւր գերծցէ. եւ ողողեսցէ զհանդերձս իւր. եւ լուասցէ զմարմին իւր ջրով՝ եւ սբ լիցի։ 9 *Եւ յաւուրն ութերորդի առցէ երկուս գառինս անարատս տարեւորս. եւ որոջ մի անարատ տարեւոր. եւ երիս տասանորդս նաշհոյ 'ի զոհ՝ իւղով զանգեալ. եւ ճաշակ մի իւղոյ։ 10 *Եւ կացուսցէ քահանայն՝ որ սրբիցէ զայրն որ սրբիցի. եւ զայն առաջի խորանին վկայութե։ 11 *Եւ առցէ քահանայն զմի գառն. եւ մատուսցէ զնա վն յանցանաց. եւ զճաշակն իւղոյ. եւ նուիրեսցէ զայն նուէր առաջի Տն։ 12 *Եւ սպանցէ զգառն միւս 'ի տեղւոջն ուր սպանանիցեն զողջակէզն՝ եւ զվն մեղացն 'ի սուրբ տեղւոջ. զի որպէս որ վասն մեղացն իցէ. նոյնպէս եւ որ վն յանցանացն իցէ. եւ եղիցի քահանայիցն. զի սրբութի սրբութեց է։ 13 *Եւ առցէ քահանայն յարենէ այնր՝ որ վն յանցանացն իցէ. եւ դիցէ քահանայն յարենէ անտի 'ի վերայ բլթակի 14 աջոյ ունկան այնորիկ՝ որ սրբեսցի. եւ 'ի վերայ ծայրի ձեռին նր աջոյ. եւ 'ի վն ծայրի ոտին նր աջոյ։ 15 *Եւ առեալ քահանայն 'ի ճաշակէ անտի իւղոյն. արկցէ 'ի ձախոյ ձեռն քահանային։ 16 *Եւ թացցէ քահանայն զմատն իւր աջոյ յիւղոյ անտի՝ որ իցէ 'ի ձեռին իւրում ձախոյ. եւ ցանեսցէ մատամբ իւրով եօթնանգամ առաջի Տն։ 17 *Եւ զմնացեալ իւղն 'ի ձեռին իւրում դիցէ քահանայն 'ի վերայ բլթակի աջոյ ունկան այնորիկ՝ որ սրբելոցն իցէ. եւ 'ի ծայրի աջոյ ձեռին նորա. եւ 'ի ծայրի աջոյ ոտին նր 'ի տեղւոջ արեանն յանցանաց։ 18 *Եւ զմնացեալ իւղն 'ի ձեռին քահանային դիցէ քահանայն 'ի վերայ սրբեցելոյն։ 19 *Եւ քաւեսցէ վն նորա քահանայն առաջի Տն. եւ արասցէ քահանայն զվասն մեղացն. եւ քաւեսցէ քահանայն վն այնորիկ՝ որ սրբելոցն իցէ 'ի մեղաց իւրոց. եւ ապա սպանցէ 20 քահանայն զողջակէզն։ *Եւ հանցէ քահանայն զողջակէզն եւ զզոհն առաջի Տն 'ի սեղանն. եւ քաւեսցէ վասն նր 21 քահանայն՝ եւ սրբեսցի։ *Եւ եթէ աղքատ իցէ. եւ չգտանիցէ ձեռն իւր. առցէ զգառն մի վն յանցանաց՝ զոր յանցեաւ 'ի նուէր առ 'ի քաւելոյ վն նորա. եւ զտասանորդ նաշհոյ իւղով զանգեալ 'ի զոհ. եւ ճաշակ մի իւղոյ։ 22 *‖Եւ երկուս տատրակս կամ երկուս ձագս աղաւնւոյ. որ չափ լինչ եգիտ ձեռն իւր. եւ եղիցի մին վասն մեղաց. 23 եւ մին յողջակէզ։ *Եւ տարցի զայն յաւուրն ութերորդի առ քահանայն. առ 'ի սրբելոյ զնա առ դրան խորանին 24 վկայութե առաջի Տն։ *Եւ առեալ քահանայն զգառն զվն յանցանաց՝ եւ զճաշակն իւղոյ. եւ դիցէ նուէր 25 առաջի Տն։ *Եւ սպանցէ զգառն զվասն յանցանաց. եւ առցէ քահանայն յարենէ անտի՝ որ վասն յանցանացն իցէ. եւ դիցէ 'ի վերայ բլթակի աջոյ ունկան սրբեցելոյն. եւ 'ի ծայրի աջոյ ձեռին նր. եւ 'ի ծայրի աջոյ ոտին նր։ 26 *Եւ յիւղոյ անտի արկցէ քահանայն 27 'ի ձախոյ ձեռն քահանային։ *Եւ ցանեսցէ քահանայն մատամբն աջոյ յիւղոյ անտի՝ որ իցէ 'ի ձախու ձեռին իւրում եօթն անգամ առաջի Տն։ 28 *Եւ դիցէ քահանայն յիւղոյն անտի՝ որ իցէ 'ի ձեռին իւրում. 'ի վն բլթակի աջոյ ունկան սրբեցելոյն. եւ 'ի վն ծայրի աջոյ ձեռին նր. եւ 'ի վն ծայրի աջոյ ոտին նր 'ի տեղւոջ արեանն՝ որ 29 վն յանցանացն իցէ։ *Եւ զմնացեալ իւղն որ իցէ 'ի ձեռին քահանային. արկցէ 'ի գլուխ սրբեցելոյն. եւ քաւեսցէ

ցէ

‖ Մատթ. 8. 4.
‖ Մարկ. 1.44.
Ղուկ. 5.14.
‖ Վեր. 5. 7. և 17 ։ և 12.8.
Ղուկ. 2.24.

ցէ վասն նորա քահանայն առաջի Տն։ 30 *Եւ արասցէ զմի 'ի տատրակաց անտի կամ 'ի ձագուցն աղաւնեաց՝ ըստ ընչիցն զոր եգիտ 'ի ձեռս իւրում։ 31 *Զմին վն մեղաց. և զմին յողջակէզ հանդերձ զոհիւն. և քաւեսցէ քահանայն վասն սրբեցելոյն առաջի Տն։ 32 *Այս օրէն իցէ յորում իցէ արած բորոտութե. և որ ոչ գտանիցի 'ի ձեռին քաւական լինելոյ 'ի սրբուն իւր։

33 *Խօսեցաւ Տէր ընդ մովսէսի՝ և ընդ ահարոնի. և ասէ։ 34 *Յորժամ մտանիցէք յերկիրն քանանացւոց՝ զոր ես տաց ձեզ 'ի ստացուած. և տայցեմ արած բորոտութե 'ի տունս երկրին ստացուածոց ձերոց։ 35 *Եւ գայցէ՝ որոյ տունն իցէ՝ և պատմիցէ քահանային՝ և ասիցէ, եթէ արած իմն երևեցաւ 'ի տան իմում։ 36 *Հրաման տացէ քահանայն թափել զտունն՝ մինչև մտեալ իցէ քահանային տեսանել զտունն՝ և պղծեսցէ քահանայն զամ ինչ՝ որ 'ի տանն կայցէ. և ապա մտցէ քահանայն որոնել զտունն։ 37 *Եւ տեսանիցէ քահանայն զարածն յորմս տանն. զնստագոյնս, կանաչս՝ կարմրացեալս. և տեսիլն նոցա զնստագոյն իցէ քան զորմոյն։ 38 *Եւ ելեալ քահանայն 'ի տանէ անտի 'ի դուռն տանն. զատուսցէ քահանայն զտունն զեօթն օր։ 39 *Եւ եկեսցէ դարձեալ քահանայն յաւուրն եօթներորդի. և տեսանիցէ զտունն. եթէ սփռեալ իցէ արած տանն ընդ որմս տանն։ 40 *Հրաման տացէ քահանայն՝ և քակեսցեն զքարինսն յորս արածն իցէ. և հանցեն զնոսա արտաքոյ քաղաքին 'ի տեղի անսուրբ։ 41 *Եւ քերեսցեն զնա 'ի ներքոյ շուրջանակի. և հեղցեն զքերուածն արտաքոյ քաղաքին 'ի տեղի անսուրբ։ 42 *Եւ առցեն այլ քարինս քերածոյս՝ և դիցեն փոխանակ այնց քարանց. և այլ հող առցեն՝ և ծեփեսցեն զտունն։ 43 *Եւ եթէ անդրէն կրկնեսցի արածն. և երևեսցի 'ի տան՝ յետ զքարինսն քակելոյ. և զտունն քերելոյ և միւս անգամ ծեփելոյ։ 44 *Մտցէ քահանայն՝ և տեսցէ թէ սփռեալ իցէ արածն ընդ տունն. բնակ բորոտութի է 'ի տանն՝ պիղծ է։ 45 *Քակեսցեն զտունն՝ և զփայտ նր՝ և զքարինս նր. և զամ հող տանն. և հանցեն արտաքոյ քաղաքին 'ի տեղի անսբ։ 46 *Եւ որ մտանիցէ 'ի տունն զամ աւուրս զատանելոյն նր, պիղծ լիցի մինչև ցերեկոյ։ 47 *Եւ որ ննջիցէ 'ի տան անդ՝ լուասցէ զձորձս իւր. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ. և որ կերիցէ 'ի տանն՝ լուասցէ զձորձս իւր. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ։ 48 *Եւ եթէ եկեալ մտանիցէ քահանայն և տեսանիցէ. և ահա չիցէ սփռեալ արածն ը̄ տունն. և սրբեսցէ քահանայն զտունն. զի բժշկեցաւ արածն։ 49 *Եւ առցէ առ 'ի սրբելոյ զտունն երկուս հաւս կենդանիս սուրբս. և զփայտ եղևնեայ. և զկարմիր մանեալ և զզոպայ։ 50 *Եւ սպանցէ զմի հաւն յաման խեցեղէն 'ի վր ջրոյ կենդանւոյ։ 51 *Եւ առցէ զփայտն եղևնեայ. և զկարմիրն մանեալ և զզոպայն. և զհաւն կենդանի. և թացցէ զնոսա յարեան հաւուն սպանելոյ 'ի վերայ ջրոյ կենդանւոյ. և ցանեսցէ նոքօք զտամբն եօթնանգամ։ 52 *Եւ սրբեսցէ զտունն արեամբ հաւուն՝ և ջրովն կենդանեաւ. և հաւուն կենդանեաւ. և փայտիւն եղևնով և զոպայիւն. և կարմրովն մանելով։ 53 *Եւ արձակեսցէ զհաւն կենդանի արտաքոյ քաղաքին 'ի դաշտ. և քաւեսցէ վն տանն՝ և նբ եղիցի։ 54 *Այս օրէն լիցի ըստ ամ արածոյ բորոտութե. և հարածի։ 55 *Եւ բորոտութե հանդերձի. և տան։ 56 *Եւ սպւոյ. և պալարի. և պաղպաջի։ 57 *Նշանակելոյ. թէ յորում աւուր պղծիցի. և յորում աւուր սրբիցի. այս օրէն լիցի բորոտութե։

## ԳԼ. ԺԵ.

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ընդ ահարոնի՝ և ասէ։ 2 *Խօսեաց ը̄ որդւոց իէլի՝ և ասասցես ցդոսա։ առն ուրուք առն որոյ լինիցի ծորումն 'ի մարմնոյ իւրոյ. ծորումն իւր պիղծ իցէ։ 3 *Եւ այս օրէն լիցի սրբութե նորա. որոյ ծորիցի սերմն 'ի մարմնոյ իւրմէ. կամ թէ հալիցի մարմին նր 'ի ծորելոյն. պղծութի իւր 'ի նմ է զամենայն աւուրս ծորելոյ մարմնոյ իւրոյ. կամ թէ հալիցի մարմին նր 'ի ծորելոյ անտի. պղծութի մարմնոյ է այն։ 4 *Ամ անկողին յորում ննջիցէ սերմնակաթն՝ պիղծ եղիցի. և ամ յորոյ վր նստիցի՝ պիղծ լիցի։ 5 *Եւ մարդ որ մերձեսցի յանկողին նորա՝ ողողեսցէ զձեռս իւր. և լուասցի ջրով՝ և պիղծ լիցի մինչև ցերեկոյ։ 6 *Եւ որ նստիցի 'ի վերայ անօթոյ՝ յորում նստեալ իցէ սերմնակաթն՝ ողողեսցէ զհանդերձ իւր և լուասցի ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ։ 7 *Եւ որ մերձեսցի 'ի մարմին սերմնակաթին. ողողեսցէ զձորձս իւր՝ և լուասցի ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ։ 8 *Եւ եթէ թուք սերմնակաթին հասանիցէ 'ի սուրբն. ողողեսցէ զձորձս իւր, և լուասցի ջրով.

ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ: *Եւ ամ̃ համետ իշոյ՝ յորոյ վ̃ր նստցի սերմնականն՝ պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 10 *Եւ ամ̃՝ որ մերձեսցի յամ̃ որինչ ներքոյ նր իցէ, պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 11 *Եւ յորինչ մերձեսցի սերմնականն՝ և զձեռս իւր ոչ լուանայցէ ջրով՝ ողողեսցէ զհանդերձս իւր. և լուասցէ զմարմին իւր ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 12 *Եւ անօթ խեցեղէն՝ յոր մերձեսցի սերմնականն՝ փշրեսցի. և ամ̃ անօթ փայտեղէն լուասցի ջրով՝ և եղիցի սրբ̃: 13 *Եւ եթէ սրբեսցի սերմնականն 'ի բղխմանէ իւրմէ. համարեսցի իւր եօթն օր 'ի սրբութ̃ իւր. և ողողեսցէ զհանդերձս իւր. և լուասցէ զմարմին իւր ջրով կենդանեաւ. և եղիցի սրբ̃: 14 *Եւ յաւուրն ութերորդի առցէ երկուս տատրակս, կամ երկուս ձագս աղաւնեաց. և տարցի զայն առաջի Տն̃ 'ի դուռն խորանին վկայութ̃ե. և տացէ ցքահանայն: 15 *Եւ արասցէ քահանայն զմին վն̃ մեղաց. և զմին յողջակէզ. քաւեսցէ վն̃ նորա քահանայն առաջի Տն̃ 'ի բղխմանէ անտի նորա: 16 *Եւ այր ուք՝ յորմէ ելանիցէ արութ̃ի սերման, լուասցէ զամ̃ մարմին իւր ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 17 *Եւ ամ̃ հանդերձ և մաշկ՝ յորոյ վերայ հասանիցի արութ̃ի սերման, լուասցին ջրով՝ և պիղծք լիցին մինչև ցերեկոյ: 18 *Եւ կին ընդ որում հարկանիցի այր արութ̃բ սերման. լուասցին ջրով՝ և պիղծք լիցին մինչև ցերեկոյ: 19 *Եւ կին որոյ բղխիցի արիւն. և լինիցի բղխումն արեան նր 'ի մարմնի իւրում, եօթն օր որոշեսցի: 20 *Ամենայն որ հարկանիցի ընդ նա, պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 21 *Եւ ամ̃ յորոյ վերայ ննջիցէ 'ի դաշտանին իւրում. և ամ̃ յորոյ վ̃ր նստիցի՝ պիղծ լիցի: 22 *Եւ ամ̃ որ մերձենայ յանկողին նորա, ողողեսցէ զհանդերձս իւր՝ և լուասցէ զմարմին իւր ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 23 *Եւ ամ̃ որ մերձենայցէ յամ̃ անօթ՝ յորոյ վ̃ր նստիցի նա. ողողեսցէ զհանդերձս իւր՝ և լուասցի ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 24 *Եւ եթէ տակաւին յանկողնին իւրում իցէ. և կամ 'ի վերայ անօթոյ իրիք յորոյ վ̃ր նստեալ իցէ. 'ի մերձենալ ուրուք առ նա, պիղծ լիցի մինչև ցերեկոյ. և եթէ ննջելով ոք ննջեսցէ ընդ նմա՝ և պղծութ̃ի նր 'ի նմա իցէ. պիղծ լիցի զեօթն օր. ամ̃ անկողին յորոյ վերայ ննջիցէ, պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 25 *Եւ կին, որ բղխիցէ զբղխումն արեան զաւուրս բազումս. ոչ 'ի ժամանակի դաշտանի իւրոյ. և եթէ բղխիցէ յետ դաշտանին իւրոյ. ամէն աւուրք բղխմանն պղծութեան իւրոյ, այնպէս իցեն՝ իբրև զաւուրս դաշտանին իւրոյ. և եղիցի պիղծ: 26 *Եւ ամ̃ անկողին՝ յորոյ վերայ ննջիցէ զամ̃ աւուրս բղխմանն իւրոյ. ըստ անկողնի դաշտանին իւրոյ լինիցի նմա սուրբ: և ամ̃ անօթ յորոյ վ̃ր նստիցի՝ պիղծ լիցի. ըստ պղծութ̃ե աւուրց դաշտանին իւրոյ: 27 *Ամենայն որ մերձեսցի 'ի նա՝ պիղծ լիցի. և ողողեսցէ զձորձս իւր՝ և լուասցէ զմարմին իւր ջրով. և պիղծ լիցի մինչև ցերեկոյ: 28 *Ապա թէ սրբեսցի 'ի բղխմանէ անտի, համարեսցի իւր աւուրս եօթն՝ և ապա սրբեսցի: 29 *Եւ յաւուրն ութերորդի առցէ իւր երկուս տատրակս. կամ երկուս ձագս աղաւնեաց. և տարցի զայն առ քահանայն 'ի դուռն խորանին վկայութ̃ե: 30 *Եւ արասցէ քահանայն զմին վասն մեղաց. և զմին յողջակէզ. և քաւեսցէ վն̃ նր քահանայն առաջի Տն̃. 'ի բղխմանէ պղծութ̃ե նորա: 31 *Եւ զգուշագոյնս առնիցէք զորդիսն Իղի 'ի պղծութեց իւրեանց. և ոչ մեռանիցին վն̃ անսրբութ̃ե իւրեանց. առ 'ի պղծելոյ նոցա զխորանն իմ, որ է 'ի նոսա: 32 *Այս օրէնք իցէ սերմնականին. և եթէ ելանիցէ յումեքէ արութ̃ի սերման առ 'ի պղծելոյ նովաւ: 33 *Եւ տեռատեսի 'ի դաշտանի իւրում: և սերմնականին 'ի բղխման իւրում. արուին և իգի. և առն որ ննջիցէ ընդ դաշտանի:

## ԳԼ: ԺԶ:

1 Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ասէ. յետ վախճանելոյ որդւոցն Ահարոնի. ‖ 'ի մատուցանել նր զհուրն օտար Տն̃ և սատակելն: 2 *Եւ ասէ Տր ցՄովսէս. խօսեաց ընդ Ահարոնի ընդ եղբօր քում. ‖ և մի մտցէ յամենայն ժամ 'ի սրբութին՝ 'ի ներքս քան զվարագոյրն յանդիման քաւութենէն՝ որ է 'ի վ̃ր տապանակի վկայութենն. և ոչ մեռանիցիք: զի ամպով երևեցայց 'ի վերայ քաւութենէն: 3 *Եւ ապա մտանիցէ Ահարոն 'ի սրբութին. զուարակաւ յանդոյ վն̃ մեղաց. և խոյիւ յողջակէզ: 4 *Եւ պատմուճան կտաւի սրբեալ զգեցցի. և անդրավարտիս կտաւիս ունիցի յանդամս իւր. և գօտի կտաւի ածեալ ընդ մէջ իւր. և խոյր կտաւի եդեալ 'ի գլուխ. զի հանդերձ սրբութե է. և լուասցէ ջրով զամ̃ մարմին իւր՝ և զգեցցի զնոսա: 5 *Եւ 'ի ժողովրդենէ որդւոցն Իղի առցէ

Ղև. 10. 1.

Ելից. 30. 11.

Եբրայ. 9. 7.

առցէ երկուս նոխազս յայծեաց վն մեղաց. և խոյ մի յողջակէզ։ *6 Եւ մատուսցէ ահարոն զզուարակն վն մեղացն իւրոց. և քաւեսցէ վն իւր, և վն տան իւրոյ։ *7 Եւ առցէ երկուս նոխազս. և կացուսցէ զնոսա առաջի Տն առ դրան խորանին վկայութն։ *8 Եւ արկցէ ահարոն 'ի վերայ երկուց նոխազացն վիճակս՝ մի Տն. և վիճակ մի արձակելոյ։ *9 Եւ մատուսցէ ահարոն զնոխազն՝ յորոյ վերայ իցէ վիճակ Տն։ *10 Իսկ յորոյ վերայ վիճակն արձակելոյ, և կացուսցէ զնա առաջի Տն կենդանի քաւել նովաւ՝ առ արձակելոյ զնա յարձակումն՝ և թողլոյ զնա յանապատ։ և առցէ նոխազն յինքն զանօրէնութիւս նոցա յանկոխս։ *11 Եւ մատուսցէ ահարոն զզուարակն զվն մեղաց իւր. և քաւեսցէ վն իւր՝ և վասն տան իւրոյ։ և սպանցէ զզուարակն զվասն մեղացն իւր։ *12 Եւ առցէ լի բուրվառաւ կայծակունս հրոյ 'ի սեղանոյ անտի. որ է առաջի Տն. և լցցէ զձեռս իւր խնկով համդերձանացն մանր աղացելով. և տարցի 'ի ներքս քան զվարագոյրն։ *13 Եւ դիցէ զխունկն 'ի վերայ հրոյն առաջի Տն. և ծածկեսցէ ծուխ խնկոյն զքաւութիւն՝ որ իցէ 'ի վր վկայութեցն. և ոչ մեռանիցի։ *14 Եւ առցէ յարենէ զուարակին. և ցանեսցէ մատամբ իւրով 'ի վերայ քաւութեն ընդ կողմն արևելից ընդդէմ քաւութեն։ Եւ ցանեսցէ եօթնանգամ յարենէ անտի մատամբ իւրով։ *15 Եւ սպանցէ զնոխազն զվն մեղաց. որ վասն ժողովրդեանն իցէ առաջի Տն։ և տարցի յարենէ անտի 'ի ներքս քան զվարագոյրն. և արասցէ զարիւն նորա. զոր օրինակ արար զարիւնն զուարակին։ և ցանեսցէ զարիւնն նր 'ի վերայ սեղանոյն յանդիման քաւութեն։ *16 Եւ քաւեսցէ զսրբութիւնն 'ի պղծութեց որդւոցն իէլի. և յանիրաւութեց նոցա. և վն ամ մեղաց նց։ և այսպէս արասցէ 'ի խորանին վկայութե. ստացելոյ 'ի նոսա 'ի մէջ պղծութե նց։ *17 ‖ Եւ ամենևին մարդ ո՛չ լինիցի 'ի խորանին վկայութե 'ի մտանելն նր և քաւել 'ի սրբութեն մինչև ելանիցէ։ և քաւեսցէ վն իւր և վն տան իւրոյ. և վասն ամ ժողովրդեան որդւոց իէլի։ *18 Եւ յորժամ ելցէ 'ի սեղանոյն՝ որ առաջի Տն. և քաւեսցէ 'ի վերայ նր։ և առցէ յարենէ զուարակին. և դիցէ 'ի վր եղջերաց սեղանոյն շուրջանակի։ *19 Եւ ցանեսցէ յարենէ անտի 'ի վերայ նորա մատամբ իւրով եօթն անգամ. և մաքրեսցէ զնա. և սրբեսցէ զնա 'ի պղծութեց որդւոցն իէլի։ *20 Եւ վախճանեսցէ առ 'ի քաւելոյ զսրբութիւն. և զխորանն վկայութե և զսեղանն։ և վն քահանայիցն սրբեսցէ։ և մատուսցէ զնոխազն կենդանի։ *21 Եւ դիցէ ահարոն զձեռս իւր 'ի վր գլխոյ նոխազին կենդանւոյ. և խոստովան լիցի 'ի վերայ նր զամ անօրէնութիւնս որդւոցն իսրայէլի. և զամ անիրաւութիւնս նոցա. և զամ զմեղս նց։ և դիցէ զնս 'ի վր գլխոյ նոխազին կենդանւոյ. և արձակեսցէ 'ի ձեռն առն պատրաստելոյ՝ յանապատ։ *22 Եւ առցէ նոխազն յանձն իւր զանօրէնութիւնս նց յերկիր անկոխ. և արձակեսցէ զնոխազն յանապատ։ *23 Եւ մտցէ ահարոն 'ի խորանն վկայութե. և մերկասցի զպատմուճանն կտաւի. զոր զգեցեալ էր 'ի մտանելն իւրում 'ի սրբութիւն. և դիցէ զայն անդ։ *24 Եւ լուասցէ զմարմին իւր ջրով 'ի տեղւոջն սրբութե. և զգեցցի զպատմուճան իւր. և ելեալ արասցէ զողջակէզն իւր և զողջակէզ ժողովրդեան։ և քաւեսցէ վն իւր. և վն տան իւրոյ. և վն ժողովրդեանն՝ որպէս վասն քահանայիցն։ *25 Եւ զճարպն՝ որ վասն մեղացն իցէ՝ հանցէ 'ի սեղանն։ *26 Եւ որ արձակիցէ զնոխազն ուխտեալ յարձակումն՝ ողողեսցէ զձորձս իւր. և լուասցէ զմարմին իւր ջրով. և ապա մտցէ 'ի բանակն։ *27 Եւ զզուարակն որ վն մեղաց, և զնոխազ վասն մեղացն, որոց արիւնն մուծաւ քաւել 'ի սրբութեն, հանցեն ‖ արտաքոյ բանակին՝ և այրեսցեն զնս հրով. և զմորթս նց. և զմիս նց՝ և զապաճառ նոցա։ *28 Եւ որ այրիցէ զնոսա՝ ողողեսցէ զհանդերձս իւր. և լուասցէ զմարմին իւր ջրով. և ապա մտցէ 'ի բանակն։ *29 Եւ եղիցի ձեզ այն օրէն յաւիտենական։ ‖ յամսեանն եօթներորդի 'ի տասն ամսոյն՝ լլկեսջիք զանձինս ձեր. և զամ գործ մի գործիցէք. բնակն և պանդուխտն՝ որ յեցեալ իցէ 'ի ձեզ։ *30 Յաւուրն յայնմիկ լինիցի քաւութի վասն ձեր. առ 'ի սրբելոյ զձեզ յամ մեղաց ձերոց առաջի Տն։ և սրբիջիք։ *31 Օր շաբաթ շաբաթուց է. եղիցի ձեզ այն 'ի հանգիստ. և լլկեսջիք զանձինս ձեր. զի օրէն յաւիտենական է։ *32 Եւ քաւեսցէ քահանայն՝ զոր օծանիցեն. և զորոյ կատարիցեն զձեռս նորա քահանայանալ յետ հօր իւրոյ. և զգեցցի զպատմուճանն կտաւի. պատմուճան սրբ։ *33 Եւ քաւեսցէ զսրբութիւն սրբութեց. և զխորանն վկայութե. և զսեղանն. և քաւեսցէ վասն քահանայիցն. և վն ամ

‖ Ղուկ. 1.10.

‖ Եբր. 13.11.

‖ Ղևտ. 23.27 և 28.

ամ ժողովրդեանն քաւեսցէ: * Եւ եղիցի ձեզ այն օրէն յաւիտենական քաւել վն որդւոցն իսրայէլի յամ մեղացն նց: միանգամ 'ի տարւոջ առնիցի. որպէս հրամայեաց Տր մովսէսի: 35

## ԳԼ. ԺԷ.

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ եւ ասէ: 2 * Խօսեաց դու ընդ ահարոնի՝ եւ ընդ որդիս նր՝ եւ ընդ ամ որդիսն իէի. եւ ասասցես ցնս: այս բանն է. զոր պատուիրեաց Տր՝ եւ ասէ: 3 * Այր ոք՝ այր յորդւոցն իսրայէլի. որ սպանանիցէ արջառ կամ ոչխար կամ այծ 'ի բանակի. եւ որոք սպանանիցէ արտաքոյ բանակին:( եւ 'ի դուռն խորանին վկայութե ոչ ածիցէ զայն. առ առնելոյ զնա յողջակեզ վն փրկութե Տն ընդունելի 'ի հոտ անուշից: եւ որ սպանանիցէ արտաքոյ:) 4 * Եւ 'ի դուռն խորանին վկայութե ոչ ածիցէ. առ 'ի մատուցանելոյ պատարագ Տն յանդիման խորանին վկայութե Տն. յարիւն համարեսցի մարդոյն այնմիկ. որպէս թէ զարիւն եհեղ, սատակեսցի անձն այն 'ի ժողովրդենէ իւրմէ: 5 * Որպէս զի ածիցեն որդիքն իսրայէլի զզոհս իւրեանց՝ զոր ինքեանք մատուսցեն առաջի Տն 'ի դուռն խորանին վկայութե առ քահանայն. եւ զենուցուն զնս զենումն փրկութե Տն: 6 * Եւ հեղցէ քահանայն զարիւնն առ սեղանովն յանդիման Տն. առ դրան խորանին վկայութե. եւ հանցէ զճարպն 'ի հոտ անուշից Տն: 7 * Եւ ոչ եւս զոհիցեն զզոհս իւրեանց սնոտեաց. զորոց զհետ ինքեանք պոռնկէին: օրէն յաւիտենական եղիցի ձեզ յազգս ձեր: 8 * Եւ ասասցես ցնս. մարդ ոք՝ մարդ յորդւոցդ իսրայէլի. եւ յորդւոց եկաց յեկելոց 'ի ձեզ. որ առնիցէ զողջակէզ կամ զոհ: 9 * Եւ 'ի դուռն խորանին վկայութե ոչ ածիցէ առնել զնա Տն, սատակեսցի մարդն այն 'ի ժողովրդենէ իւրմէ: 10 * Եւ մարդ՝ յորդւոցդ իսրայէլի. կամ յեկաց յեկելոց 'ի ձեզ. որ ուտիցէ զամենայն արիւն. հաստատեցից զերեսս իմ 'ի վր անձինն՝ որ ուտիցէ զարիւնն. եւ կորուսից զնա 'ի ժողովրդենէ իւրմէ: 11 * Զի շունչ ամ մարմնոյ արիւն իւր է. եւ ես ետու զայն ձեզ 'ի սեղանն, քաւել վն անձանց ձերոց: զի արիւն նր փոխանակ անձին նր քաւեսցէ: 12 * Վն այնորիկ ասացի ցորդիսն իսրայէլի. ամ անձն 'ի ձէնջ զարիւն մի կերիցէ: եւ եկն, որ եկեալ յեցեալ իցէ 'ի ձեզ՝ արիւն մի կերիցէ: 13 * Եւ մարդ ոք՝ մարդ յորդւոցդ իէի. կամ յեկաց յեցելոց 'ի ձեզ. որ որսայցէ որս երէ ինչ՝ կամ թռչուն որ ուտիցի, հեղցէ զարիւն նորա. եւ ծածկեսցէ հողով: 14 * Զի շունչ ամ մարմնոյ արիւն իւր է: եւ ասացի ցորդիսն իսրայէլի՝ զարիւն ամ մարմնոյ մի ուտիցէք. զի շունչ ամ մարմնոյ արիւն իւր է: ամ որ ուտիցէ զայն՝ սատակեսցի: 15 * Եւ ամ անձն որ ուտիցէ զմեռելոտի՝ կամ զգազանաբեկ՝ յամ եկաց կամ 'ի պանդխտաց, ողողեսցէ զհանդերձս իւր. եւ լուասցէ զմարմին իւր. եւ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ. եւ ապա սուրբ լիցի: 16 * Եւ եթէ ոչ ողողեսցէ զհանդերձս իւր. եւ ոչ լուասցէ զմարմին իւր ջրով, ընկալցի զանօրէնութիս յանձն իւր:

Ծննդ. 9. 4. Ղեւտ. 7. 26.

## ԳԼ. ԺԸ.

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ եւ ասէ: 2 * Խօսեաց ընդ որդիսն իսրայէլի՝ եւ ասասցես ցնս: ես եմ Տր Ած ձեր: 3 * Ըստ ամ գնացից երկրին եգիպտացւոց՝ յորում պանդխտեցայք՝ մի առնիցէք: եւ ըստ գնացից երկրին քանանացւոց՝ յոր ես տարայց զձեզ՝ մի առնիցէք: եւ ըստ օրինաց նց մի գնայցէք: 4 * Զիրաւունս իմ արասջիք. եւ զհրամանս իմ պահեսջիք. գնալ 'ի նոսա: ես եմ Տր Ած ձեր: 5 * Եւ պահեսջիք զամ հրամանս իմ. եւ զամ զիրաւունս իմ, արասջիք զնս: զոր արարեալ մարդոյ՝ կեցցէ նոքօք: ես եմ Տր Ած ձեր: 6 * Մարդ ոք՝ մարդ առ ամ ընտանուի մարմնոյ իւրոյ մի մերձեսցի. յայտնել զառականս նորա. զի ես եմ Տր: 7 * Զառականս հօր քոյ՝ եւ զառականս մօր քոյ մի յայտնեսցես՝ զի մայր քո է. եւ մի յայտնեսցես զառականս նր: 8 * Զառականս կնոջ հօր քոյ մի յայտնեսցես. զի առականք հօր քոյ են: 9 * Զառականս քեռ քոյ՝ թէ առ 'ի հօրէ իցէ կամ առ 'ի մօրէ՝ 'ի տան ծնեալ կամ արտաքոյ, մի յայտնեսցես զառականս նր: 10 * Զառականս դստեր ուստեր քոյ՝ կամ զդստեր դստեր քոյ՝ մի յայտնեսցես զառականս նր. զի առականք քո են: 11 * Զառականս դստեր կնոջ հօր քոյ մի յայտնեսցես. զի համհօրեայ քոյր քո է. մի յայտնեսցես զառականս նորա: 12 * Զառականս հօրաքեռ քոյ մի յայտնեսցես. զի ընտանի հօր քոյ է: 13 * Զառականս մօրաքեռ քոյ մի յայտնեսցես. զի ընտանի մօր քոյ է: 14 * Զառականս հօրեղբօր քոյ մի յայտնեսցես. եւ առ կին նր մի մտանիցես. զի ազգական քո է: 15 * Զառականս նուոյ քոյ մի յայտնիցես. զի կին որդւոյ քոյ է. մի յայտնեսցես զառականս նորա:

Եզեկ. 20. 11. Հռոմ. 10. 5. Գաղ. 3. 12.

նորա: (Եւ զդուստր ուստերն նր. կամ զդուստր դստերն նորա մի՛ առնուցուս յայտնել զառականս նց. զի ընտանիք են քո. ամպարշտութի է) : 16 *Զառականս կնոջ եղբօր քոյ մի յայտնեսցես. զի առականք եղբօր քոյ են: 17 *Զառականս կնոջ եւ զդստեր իւրոյ մի յայտնեսցես. զդուստր ուստեր նորա եւ զդուստր դստերն նր մի առնուցուս յայտնել զառականս նց. զի ընտանիք քո են՝ ամպարշտութի է: 18 *Կին առ քեռբ իւրում մի առնուցուս նախանձ ընդդէմ՝ յայտնել զառականս նորա առ նովաւ, կենդանւոյն: 19 *Եւ առ կին 'ի դաշտանի պղծութե իւրոյ մի մտանիցես՝ յայտնել զառականս նր: 20 *Եւ 'ի կին ընկերի քոյ մի տայցես զարութի սերման քոյ՝ առ 'ի պղծելոյ ընդ նմա: ‖ 21 *Եւ 'ի սերմանէ քումմէ մի տայցես ծառայել իշխանի. եւ մի պղծեսցես զանուն իմ սբ. զի ես եմ Տր: 22 *Եւ ընդ արուի մի մտանիցես զմուտ կանացի՝ զի պղծութի է այն: 23 *Եւ յամ անասուն ոչ տայցես զարութի սերման քոյ առ 'ի պղծելոյ ընդ նմա: ‖ Եւ կին մի կացցէ առաջի ամ անասնոյ մտաբերել 'ի նա, զի գարշելի է այն: 24 *Եւ մի պղծիցիք այնու ամի. զի այնու ամի պղծեցան ազգքն՝ զորս ես մերժեցից յերեսաց ձերոց: 25 *Եւ եղեւ գարշելի երկիրն. եւ հանդէս արարի անիրաւութե նր 'ի նմանէ. եւ տաղտկացաւ երկիրն 'ի բնակչաց իւրոց: 26 *Եւ պահեցէք զօրէնս իմ. եւ զամ հրամանս իմ. եւ մի առնիցէք յամ պղծութեցն այնոցիկ: բնակն. եւ եկն. եւ պանդուխտն՝ որ 'ի ձեզ իցէ: 27 *Զի զայն ամ պղծութիս արարին մարդիկ երկրին. որք էին անդ յառաջքան զձեզ. եւ պղծեցաւ երկիրն: 28 *Արդ զգուշացարուք՝ զի մի տաղտկանայցէ եւ ձեօք երկիրն՝ 'ի պղծել ձեր զնա. որպէս տաղտկացաւ ազգօքն՝ որք էին յառաջքան զձեզ: 29 *Զի ամ մարդ՝ որ արասցէ յամ պղծութեցն այնոցիկ. սատակեսցին անձինքն՝ որք առնիցեն զայն՝ 'ի միջոյ ժողովրդեան իւրեանց: 30 *Եւ պահեսջիք զպահպանութիս իմ. զի մի առնիցէք յամ պղծուեց օրինացն՝ որք գործեցան յառաջքան զձեզ. եւ մի պղծիցիք նոքօք. զի ես եմ Տր Աձ ձեր:

‖ Ղեւտ. 20.2. Դրօշէ-լոյն ծողովոյ.

‖ Ղեւտ. 20.16.

## ԳԼ: ԺԹ:

1 Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ եւ ասէ: 2 *Խօսեաց ընդ ժողովրդեան որդւոց Իսրայէլի՝ եւ ասասցես ցնոսա ‖ սուրբք եղերուք. զի ես սբ եմ Տէր Աձ ձեր: 3 *Իւրաքանչիւր 'ի հօրէ եւ 'ի մօրէ իւրմէ երկնչիջիք: եւ զշաբաթս իմ պահեսջիք. զի ես եմ Տր Աձ ձեր: 4 *Մի երթայցէք զհետ կռոց. եւ աստուածս ձուլածոյս մի առնիցէք ձեզ. ես եմ Տր Աձ ձեր: 5 *Եւ եթէ զոհիցէք զզոհ փրկութե Տն, զընդունելիսն ձեր զոհեսջիք: 6 *Յաւուր յորում մատուցանիցէք՝ կերիցի. եւ 'ի վաղիւ անդր. եւ եթէ մնասցէ մինչեւ ցօրն երրորդ, հրով այրեսցի: 7 *Ապա եթէ ուտելով ուտիցի յաւուրն երրորդի. անզոհ է, մի ընկալցի: 8 *Եւ որ ուտիցէ զայն՝ մեղս առցէ. զի զսրբութի Տն պղծեաց: եւ սատակեսցին անձինք՝ որք ուտիցենն՝ 'ի ժողովրդենէ իւրեանց: ‖ 9 *Եւ 'ի հնձել հնձողաց ձերոց զհունձս երկրին ձերոյ, մի սպառիցէք զհունձս անդոց ձերոց մօտ հնձելով. եւ զանկեալսն 'ի հնձոց քոց մի ժողովեսցես: 10 *Եւ յայգիս քո զճռաքաղ մի առնիցես: եւ պտղաքաղ այգւոյ քոյ մի լինիցիս: տնանկի եւ պանդխտի թողցես զայն. ես եմ Տր Աձ ձեր: 11 *Մի գողանայցէք. եւ մի ստիցէք. եւ մի զրպարտիցէք իւրաքանչիւր զընկեր իւր: 12 *Եւ ‖ մի երդնուցուք սուտ յանուն իմ. եւ մի պղծիցէք զանուն Տն Այ ձերոյ. ես եմ Տր Աձ ձեր: 13 *‖ Մի զրկեսցես զընկեր քո. եւ մի յափշտակեսցես. ‖ եւ մի ագցին վարձք վարձկանին առ քեզ մինչեւ ցաւօտ: 14 *Զհամրն մի զզուիցես. եւ առաջի կուրին զգայթագղութ մի դնիցես: եւ երկնչիցիս 'ի Տէ Այ քումմէ: ես եմ Տր Աձ քո: 15 *Անիրաւութի 'ի դատաստանի մի առնիցես. ‖ եւ ակն աղքատի մի առնուցուս. եւ մի երեսաց աչառիցես հարստի: արդարութբ դատեսցես զընկեր քո: 16 *Եւ նենգութբ ընդ ազգի քում մի գնասցես: եւ յարիւն ընկերի քոյ մի յոժարիցիս: ես եմ Տր Աձ ձեր: 17 *‖ Մի ատեսցես զեղբայր քո 'ի միտս քում: յանդիմանութբ յանդիմանեսցես զընկեր քո, եւ մի ընդունիցիս վն նր զմեղս: 18 *Եւ մի խնդրեսցէ վրէժ ձեռն քո: եւ ընդ որդւոց ժողովրդեան քոյ ոխս մի ունիցիս: ‖ եւ սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո. զի ես եմ Տր: 19 *Զօրէնս իմ պահեսջիք: զանասուն քո օտարախառնս մի խառնիցես. եւ զայգիս քո մի վարեսցես այլ եւ այլ. եւ զձորձս երկդիմիս եւ գարշելիս մի արկանիցես զքեւ: 20 *Եթէ ոք ննջեսցէ ընդ կնոջ արութբ սերման. ‖ եւ նա իցէ աղախին պահեալ առն. եւ փրկանօք չիցէ փրկեալ. եւ ազատութբ չիցէ ազատեալ. հարց եւ փորձ լիցի նց. եւ մի մեռանիցին՝ զի չիցէ ազատեալ:

‖ Ղեւտ. 11.44. 1. Պետ. 1.16.

‖ Ղեւտ. 23.22.

‖ Ելք. 20.7. 2. Օր. 5.11.

‖ Մեր. 10.6.

‖ 2. Օր. 24.14.

‖ 2. Օր. 1.17. և 16.19.

Առակ. 24.23.

‖ Մեր. 42.1.

Յակ. 2.2.

‖ 1. Յով. 2.11. և 3.14.

‖ Մեր. 19.13.

Մատ. 18.15.

Ղ. 17.3.

‖ Մ. 5.43. և 22.39.

Ղ. 6.27.

*Եւ

Հռոմ. 13.9. Գաղատ. 5.14. Յակոբ. 2.8.

21 *Եւ մատուսցէ Է̃ յանցանացն իւրոց Տն առ դրան խորանին վկայութեան խոյ յանցանաց ։ 22 *Եւ քաւեսցէ վասն նր քահանայն խոյիւն յանցանաց առաջի Տն վասն մեղացն՝ զոր մեղաւ. և թողցին նմա մեղքն՝ զորս մեղաւ։

23 *Եւ յորժամ մտանիցէք յերկիրն՝ զոր Տր ԱԾ տայցէ ձեզ. և տնկիցէք զամ ծառ ուտելի, սրբեսջիք զպղծութի նորա. և պտուղ նորա զերեամ պիղծ լիցի ձեզ՝ և մի կերիցի ։ 24 *Եւ յամին չորրորդի եղիցի ամ պտուղ նորա սբ օրհնեալ Տն ։ 25 *Եւ յամին հինգերորդի կերիջիք զպտուղ նր. յաւելուած ձեզ լիցին բերք նր։ Ես եմ Տր ԱԾ ձեր։ 26 *Մի ուտիցէք զմիս ընդ արեան. 'ի վր լերանց մի ուտիցէք ։ և մի հմայեսցէք. և մի հաւահարք լինիցիք ։ 27 *Ցռուկս 'ի վարսից գլխոց ձերոց մի առնիցէք։ և մի ապականիցէք զտեսիլ մօրուաց ձերոց ։ 28 ‖ *Եւ վէրս 'ի վր ոգւոյ մի առնիցէք 'ի մարմինս ձեր. և գիր կոեալ մի առնիցէք 'ի ձեզ։ Ես եմ Տր ԱԾ ձեր։ 29 *Մի պղծիցես զդուստր քո պոռնկեցուցանելով զնա. զի մի պոռնկեսցի երկիրն. և լցցի երկիրն անօրէնութե ։ 30 *Զշաբաթս իմ պահեսջիք. և 'ի սրբութեց իմոց երկնչիջիք՝ զի ես եմ Տր ։ 31 *Զհետ վհկաց մի երթայցէք. և 'ի գէտս մի յարիցէք պղծիլ նոքօք ։ ես եմ Տէր ԱԾ ձեր ։ 32 *Առաջի ալեաց յառնիցես. և պատուեսցես զերեսս ծերոյն. և երկնչիցիս յԱԾ քումմէ։ ես եմ Տէր ԱԾ քո։ 33 *‖Եւ եթէ յարեսցի առ ձեզ եկ յերկրին ձերում. մի նեղիցէք զնա։ 34 *Իբրև զբնակն ձեր լինիցի ձեզ՝ և եկն յարեալ 'ի ձեզ. և սիրեսցես զնա իբրև զանձն քո ։ զի պանդուխտք եղէք և դուք յերկրին եգիպտացւոց. ես եմ Տր ԱԾ ձեր։ 35 *Մի առնիցէք անիրաւութի 'ի դատաստանի ։ 'ի չափս և 'ի կշիռս և 'ի զոյգս ։ 36 *Եւ զոյգք արդարք. և կշիռք արդարք. և չափք արդարք՝ և կապիճ արդար լինիցի ձեր ։ ես եմ Տր ԱԾ ձեր՝ որ հանի զձեզ յերկրէն եգիպտացւոց։ 37 *Եւ պահեսջիք զամ զօրէնս իմ. և զամ հրամանս իմ. և արասջիք զնս՝ զի ես եմ Տէր ԱԾ։

‖2. Օրէ. 14.1.

‖Ելից. 22.21.

## ԳԼ. Ի։

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ։ 2 *Խօսեաց ը̃ որդիսդ իսրայէլի՝ և ասասցես. ‖ եթէ ոք յորդւոցդ իլի կամ յեկելոց պանդխտացն իլի տացէ զսերմն իւր իշխանի. մահու մեռցի. և ազգք երկրին քարկոծ արասցեն զնա քարամբք ։ 3 *Եւ ես հաստատեցից զերեսս իմ 'ի վերայ մարդոյն այնորիկ. և կորուսից զնա 'ի ժողովրդենէ իւրմէ. զի եա 'ի սերմանէ իւրմէ իշխանին պղծել զսրբութին իմ. և գարշեցուցանել զանուն սրբացելոցն իմոց ։ 4 *Ապա թէ ակնածելով ակնածեսցեն բնակիչք երկրին աչօք իւրեանց յառնէն յայնմանէ. 'ի տալ նր զսերմն իւր իշխանին, չսպանանել զնա։ 5 *Հաստատեցից զերեսս իմ 'ի վերայ առն այնորիկ. և 'ի վերայ ազգի նր. և կորուսից զնա՝ և զամ միաբանեալսն ընդ նմա, առ 'ի պոռնկեցուցանելոյ զնոսա ընդ իշխանին 'ի միջոյ ժողովրդեան իւրեանց ։ 6 *Եւ անձն որ երթիցէ զհետ վհկաց՝ կամ գիտաց՝ պոռնկիլ զհետ նց. հաստատեցից զերեսս իմ 'ի վերայ անձինն այնորիկ՝ և կորուսից զնա 'ի ժողովրդենէ իւրմէ ։ 7 *‖Եւ սրբեսջիք՝ և եղիջիք սբք. զի սբ եմ ես Տր ԱԾ ձեր։ 8 *Եւ պահեսջիք զհրամանս իմ՝ և արասջիք զնս. ես եմ Տր ԱԾ ձեր՝ որ սրբեմ զձեզ ։ 9 *Մարդ ոք՝ մարդ ‖ որ հայհոյեսցէ զհայր իւր կամ զմայր իւր՝ մահու մեռցի ։ զհայր իւր կամ զմայր իւր թէ բամբասեսցէ՝ մահապարտ է ։ 10 *Եւ այր ոք եթէ շնասցի ընդ առնակնոջ. կամ շնայցէ ընդ ընկերի իւրոյ. մահու մեռցին, և շնացօղն և շնացեալն ։ 11 *‖Եւ այր ոք՝ որ ննջիցէ ընդ կնոջ հօր իւրոյ. զառականս հօր իւրոյ յայտնեաց. մահու մեռցին երկոքին. զի ամպարշտեցան՝ և մահապարտք են ։ 12 *Եւ եթէ ննջեսցէ ոք ընդ նուոյ իւրում, մահու մեռցին երկոքին. զի ամպարշտեցան՝ մահապարտք են ։ 13 *Եւ այր ոք եթէ ննջեսցէ ընդ արուի զգործ կանացի. պղծութի գործեցին. մահու մեռցին երկոքեանն՝ զի մահապարտք են ։ 14 *Եւ այր ոք՝ որ առնուցու զկին և զմայր նր. անօրէնութի է հրով այրեսցեն զնա՝ և մի լինիցի 'ի ձեզ անօրէնութի ։ 15 *Եւ այր ոք՝ որ տացէ զարուի իւր յանասուն՝ մահու մեռցի. և զանասունն սպանանիջիք ։ 16 *Եւ կին՝ որ մատչիցի յամ անասուն պղծիլ նմա 'ի նմանէ, սպանանիջիք զկինն և զանասունն. և մահու մեռանիցին՝ զի մահապարտք են ։ 17 *Եւ այր ոք՝ որ առնուցու զքոյր իւր զառ 'ի հօրէ՝ կամ զառ 'ի մօրէ, և տեսանիցէ զառականս նորա, և նա տեսանիցէ զառականս սորա, նախատինք են. սատակեսցին յերեսաց որդւոց ազգին իւրեանց. զի զառականս քեռ իւրոյ յայտնեաց. ընկալցին զմեղս իւրեանց ։ 18 *Եւ այր՝ որ ննջիցէ ը̃ կնոջ

դաշ_

‖Վեր. 18.21. Իշխոյն Մոլոքայ. Մոլոքայ.

‖1. Պետ. 1.16.

‖Ելից. 21.17. Առակ. 20.20. Մատթ. 15.4. Մարկ. 7.10.

‖2. Օրէ. 22.22. Յովհ. 8.5.

դաշտանի, և յայտնեսցէ զառականս նորա, զի զաղբիւր արեան նորա յայտնեաց, և սա յայտնեաց զաղբիւր արեան իւրոյ, սատակեսցին երկոքեանն յազգէ իւրեանց։ 19 * Եւ զառականս հօրաքեռ քո և զմօրաքեռ քո մի յայտնեսցես. զի զընտանութիւն զառականս յայտնեցին, զմեղս իւրեանց տարցին՝ և անորդիք մեռցին։ 20 * Եւ մարդ ոք՝ որ ննջեսցէ ընդ կնոջ քեռւոյ իւրոյ, զառականս քեռւոյ իւրոյ յայտնեաց. զմեղս իւրեանց ընկալցին. և անորդիք մեռցին։ 21 * Եւ մարդ ոք՝ որ առնուցու զկին եղբօր իւրոյ, պղծութիւն է. զառականս եղբօր իւրոյ յայտնեաց՝ անորդիք մեռցին։ 22 * Եւ պահեսջիք զամ՟ հրամանս իմ. և զամենայն զիրաւունս իմ. և արասջիք զնս՟. և ոչ տաղտկասցի ձեզ երկիրն՝ յոր ես տարայց զձեզ բնակել 'ի նմա։ 23 * Եւ մի գնայցէք ըստ օրինաց ազգաց՝ զորս մերժեցից ես 'ի ձէնջ. զի զայն ամ՟ արարին՝ և գարշեցայ ես 'ի նոցանէ։ 24 * Եւ ասացի ցձեզ, դուք ժառանգեցէք զերկիրն զայն. և ես տաց ձեզ զնա 'ի ստացուած. երկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր. ես եմ Տր՟ Ա՟ծ ձեր՝ որ մեկնեցի զձեզ յամ՟ ազգաց։ 25 * Եւ զատուսջիք զանձինս ձեր 'ի մէջ անասնոց սրբոց և անսրբոց. և 'ի մէջ թռչնոց սրբոց և անսրբոց. և մի պղծիցէք զանձինս ձեր անասնովք՝ և թռչնովք. և ամ՟ սողնովք երկրի. զոր ես զատուցի ձեզ՝ 'ի պղծութի՟։ 26 * Եւ եղիջիք ինձ սուրբ. զի սուրբ եմ ես Տր՟ Ա՟ծ ձեր. որ զատուցի զձեզ յամ՟ ազգաց լինել ինձ։ 27 * Եւ այր կամ կին՝ յորոց լինիցի վհուկ՝ կամ գէտ, մահու մեռցին. քարամբք քարկոծեսցէք զնոսա՝ զի մահապարտք են։

‖1. Պետ. 1.16. ‖2. Օրէ. 18.11. 1. Թագ. 28.7.

## ԳԼ: ԻԱ:

Խօսեցաւ Տր՟ ընդ Մովսէսի՝ և ասէ. 1 Խօսեաց ընդ որդիսդ Ահարօնի ընդ քահանայսդ՝ և ասասցես ցդոսա. զի մի պղծեսցին յոգիս ազգի իւրեանց։ 2 * Կամ յընտանի կամ 'ի դրացի իւրեանց. այլ կամ 'ի հայր կամ 'ի մայր. կամ յուստերս կամ 'ի դստերս. կամ յեղբայր։ 3 * Կամ 'ի քոյր. կամ 'ի դուստր մերձաւոր իւր՝ որ առն չիցէ տուեալ՝ նոքօք պղծեսցին։ 4 * Եւ մի պղծեսցին վայրապար 'ի ժողովրդեան իւրում 'ի պղծութի՟ իւրեանց։ 5 * Եւ մի գերծուցուն զգլուխս իւրեանց 'ի վ՟ր մեռելոյ 'ի կնտութի՟. և զտեսիլ մօրուաց մի գերծուցուն. և 'ի մարմինս իւրեանց վէրս մի հատանիցեն։

‖Ղեւ. 19.27. Եզեկ. 44.20.

6 * Այլ սուրբ լինիցին Ա՟յ իւրեանց. և մի գարշեցուսցեն զանուն Ա՟յ իւրեանց. զի զզոհն Տ՟ն պատարագ Ա՟յ իւրեանց նոքա մատուցանեն. և եղիցին սուրբ։ 7 * Զկին պոռնիկ և զպղծեալ մի առնուցուն. և զկին հանեալ յառնէ իւրմէ մի առնուցուն. զի սուրբ է Տ՟ն Ա՟յ իւրում։ 8 * Եւ սրբեսցէ զնա. զի զպատարագսն Տ՟ն Ա՟յ ձերոյ նա մատուցանէ՝ սուրբ եղիցի. զի ս՟բ եմ ես Տէր՝ որ սրբեմ զն՟ս։ 9 * Եւ դուստր առն քահանայի եթէ 'ի պոռնկութե՟ պղծեսցի, զանուն հօր իւրոյ բամբասեաց՝ հրով այրեսցի։ 10 * Եւ քահանայն մեծ յեղբարց իւրոց. որոյ 'ի վերայ գլխոյն արկեալ է իւղն օծութե՟. և կատարեալ զձեռս ն՟ր զգենուլ զպատմուճանն, զգլուխ իւր մի ապախուրեսցէ. և զհանդերձ իւր մի պատառեսցէ։ 11 * Եւ յանձն վախճանեալ մի մտցէ. 'ի հայր իւր՝ կամ 'ի մայր իւր մի պղծեսցի։ 12 * 'Ի սրբութենէ անտի մի ելանիցէ. և մի պղծեսցէ զսրբութի՟ Ա՟յ իւրոյ. զի ս՟բ իւղն օծութե՟՝ որ յԱ՟յ, 'ի վերայ ն՟ր է։ զի ես եմ Տէր։ 13 * Նա կին կոյս յազգէ իւրմէ առնուցու։ 14 * Զայրի, և զհանեալ, և զպոռնիկ, մի առնուցու. այլ զկոյս յազգէ իւրմէ առնուցու կին։ 15 * Եւ մի պղծեսցէ զսերմն իւր 'ի ժողովրդեան իւրում. զի ես եմ Տր՟՝ որ սրբեմ զնա։ 16 * Խօսեցաւ Տր՟ ընդ Մովսէսի՝ և ասէ։ 17 * Խօսեաց ընդ Ահարօնի՝ և ասասցես. այր ոք յազգէ քումմէ յամ՟ ազգս ձեր՝ յորում իցէ արատ, մի մատիցէ մատուցանել պատարագ Ա՟յ իւրոյ։ 18 * Զի ամ՟ այր՝ յորում իցէ արատ, մի մատիցէ։ այր կաղ. կամ կոյր. կամ կարճունչ. կամ ականջատ։ 19 * Կամ այր՝ ձեռնբեկ. կամ ոտնբեկ։ 20 * Կամ սապատող. կամ չիլ. կամ պտղակն. կամ այր՝ յորում իցէ քոս. կամ քարցկեղ. կամ միորձի։ 21 * Ամենայն այր՝ յորում իցէ արատ՝ 'ի զաւակէ Ահարօնի քահանայի, մի մերձեսցի մատուցանել զոհս Ա՟յ քում. (զի արատ գոյ 'ի նմա։ և զպատարագսն Ա՟յ մի մատիցէ մատուցանել. զի պատարագքն Ա՟յ սրբութիք սրբութեանց են։) 22 * 'Ի սրբութեանց անտի կերիցէ։ 23 * Բայց 'ի վարագոյրն մի մերձեսցի. և առ սեղանն մի մատիցէ՝ զի արատաւոր է։ մի պղծեսցէ զսրբութիւն Ա՟յ իւրոյ. զի ես եմ Տէր՝ որ սրբեմ զնոսա։ 24 * Եւ խօսեցաւ Մովսէս ընդ Ահարօնի և ընդ որդիս նորա. և ընդ ամ՟ որդիսն Իսրայէլի։

‖Ղեւ. 19.29. ‖Եզեկ. 44.22.

## ԳԼ. ԻԲ.

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ եւ ասէ. 2 *Ասա ցԱհարոն եւ ցորդիս նորա. եւ զգոյշ լինիցին սրբութեանց որդւոցն Իսրայէլի. եւ մի՛ պղծեսցեն զանուն իմ սուրբ՝ զորս նոքայն սրբեն ինձ՝ զի ես եմ Տէր: 3 *Ասասցես ցնոսա. յազգս ձեր՝ ամենայն այր՝ յամենայն զաւակէ ձերմէ՝ որ մերձենայցէ 'ի սրբութիւնս, զորս սրբեսցեն որդիքն Իսրայէլի Տեառն, եւ պղծութիւն իւր 'ի նմա իցէ, սատակեսցի անձն այն յերեսաց իմոց՝ զի ես եմ Տէր: 4 *Եւ այր ոք 'ի զաւակէ Ահարոնի քահանայի՝ եթէ բորոտ կամ սերմնակաթ իցէ. 'ի սրբութեանց անտի մի՛ կերիցէ, մինչեւ սրբեսցի: Եւ որ մերձեսցի յամենայն պղծութիւն ոգւոյ. եւ կամ այր, յորմէ ելանիցէ արութիւն սերմանն: 5 *Կամ որ մերձենայցէ յամենայն սողուն պիղծ՝ զոր պղծիցեն. կամ 'ի մարդ՝ որով պղծիցեն զնա ըստ ամենայն պղծութեան նորա: 6 *Անձն՝ որ մերձենայցէ 'ի նա՝ պիղծ լիցի մինչեւ ցերեկոյ: Եւ մի՛ կերիցէ 'ի սրբութեանց անտի. եթէ ոչ լուանայցէ զմարմին իւր ջրով: 7 *Եւ մտանիցէ արեգակն. սուրբ լիցի, եւ ապա կերիցէ 'ի սրբութեանց անտի՝ զի հաց նորա է այն: 8 *‖Զմեռելոտի եւ զգազանաբեկ մի՛ ուտիցէ՝ պղծել նմա նոքօք. զի ես եմ Տէր: 9 *Եւ պահեսցեն զպահպանութիւնս իմ. զի մի՛ ընդունիցին վասն նոցա մեղս. եւ մեռանիցին վասն այնորիկ՝ եթէ պղծիցեն զնոսա. զի ես եմ Տէր որ սրբեմ զնոսա: 10 *Եւ ամենայն օտարազգի մի՛ կերիցէ զսրբութիւնս: պանդուխտ քահանայից, եւ վարձկանն մի՛ կերիցեն 'ի սրբութեանցն: 11 *Բայց թէ քահանայն ստասցի զոգի ստացուածով արծաթոյ, նա կերիցէ 'ի հացից անտի նորա: եւ ընտանիք նորա կերիցեն 'ի հացից անտի նորա: 12 *Եւ դուստր առն քահանայի եթէ լինիցի առն այլազգւոյ, նա 'ի պտղոյ սրբութեանցն մի՛ կերիցէ: 13 *Եւ դուստր առն քահանայի եթէ լինիցի այրի, կամ հանեալ. եւ զաւակ ոչ իցէ նորա՝ եւ դառնայցէ անդրէն 'ի տուն իւր հայրենի. ըստ մանկութեան իւրում 'ի հացից անտի հօր իւրոյ կերիցէ: եւ ամենայն այլազգի մի՛ կերիցէ 'ի նոցանէ: 14 *Եւ մարդ՝ որ յանգէտս կերիցէ զսրբութիւնս. յաւելցէ 'ի նոյն զհինգերորդ մասն. եւ տացէ զսրբութիւնն ցքահանայն: 15 *Եւ մի՛ պղծեսցեն զսրբութիւնս սրբութեանցն Իսրայէլի, զոր զատուցին նոքա Տեառն: 16 *Եւ ածիցեն 'ի վերայ իւրեանց անօրէնութիւն յանցանաց. ուտելով իւրեանց զսրբութիւնս սրբութեանցն. զի ես եմ Տէր՝ որ սրբեմ զնոսա:

‖ Վեր. 17.15. Ելից. 22.31. 2. Օրէ. 14. 21. Եզեկ. 44.31.

17 *Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ 18 եւ ասէ: *Խօսեաց ընդ Ահարոնի եւ ընդ որդիս նորա. եւ ընդ ամենայն ժողովուրդ դեան որդւոցն Իսրայէլի՝ եւ ասասցես ցնոսա: այր ոք՝ այր յորդւոցն Իսրայէլի: կամ յեկացն յարելոց 'ի նոսա 'ի մէջ Իսրայէլի՝ որ մատուցանիցէ զպատարագս իւր ըստ ամենայն խոստովանութեան իւրոյ. կամ ըստ ամենայն կամաց իւրոց՝ զորինչ մատուցանիցեն Տեառն յողջակէզ: 19 *Ընդունելի առ 'ի ձէնջ, արու անարատ յանդոյ՝ 20 եւ յօդեաց՝ եւ յայծեաց: *Զամենայն արատաւորն մի՛ մատուցանիցեն Տեառն. զի ոչ լինիցի ընդունելի առ 'ի ձէնջ: 21 *‖Եւ այր՝ որ մատուցանիցէ զպատարագս իւր ըստ ամենայն խոստովանութեան իւրոյ. կամ ըստ ամենայն կամաց իւրոց զոհ փրկութեան Տեառն ուխտեալ ուխտ. կամ ըստ կամաց. կամ 'ի տօնս ձեր՝ յանդոց կամ յօդեաց անարատ լինիցի յընդունելութիւն. ամենայն արատ մի՛ լիցի 'ի նմա: 22 *Զկոյրն՝ կամ զկաղն՝ կամ զբեկն՝ կամ զլեզուատ. կամ զմարմնառատ. կամ զքոսոտ. կամ զորքինոտ. մի՛ մատուցանիցեն զայն Տեառն: եւ յողջակէզ ոչ տայցէք 'ի նոցանէ 'ի սեղան Տեառն: 23 *Զարջառ եւ զոչխար զականջատ կամ զկրճատաքեղ արասցես զենլիս. եւ յուխտս քո մի՛ լինիցին ընդունելի: 24 *Զթաղամանորն եւ զմաղեալն. եւ զքածահարոտն եւ զհատեալն մի՛ մատուցանիցես Տեառն. եւ յերկրի ձերում մի՛ առնիցէք: 25 *Եւ 'ի ձեռանէ այլազգւոյն մի՛ մատուցանիցէք զպատարագս Աստուծոյ ձերոյ յամենայն յայնպիսեաց անտի. զի խեղութիւնք եւ արատք են 'ի նոսա. եւ ոչ լինիցի այն ընդունելի առ 'ի ձէնջ: 26 *Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ 27 եւ ասէ: *Արջառ՝ կամ ոչխար՝ կամ այծ՝ յորժամ ծնանիցին. կացցէ զեօթն օր ընդ մարբն. եւ յօրէն ութերորդէ եւ անդր, ընդունելի լիցի 'ի պատարագն ընծայ Տեառն: 28 *Զարջառ՝ եւ զոչխար՝ եւ զծնունդս իւրեանց մի՛ սպանանիցէք 'ի միում աւուր: 29 *Եւ եթէ զոհեսցես զզոհս գոհութեան Տեառն. ընդունելին առ 'ի ձէնջ զոհեսջիք: 30 *Ի նմին աւուր կերիցի. եւ մի՛ թողուցուք 'ի մնոյ անտի յայգ՝ զի ես եմ Տէր: 31 *Եւ պահեսջիք զպատուիրանս իմ. եւ արասջիք զնոսա՝ զի ես եմ Տէր: 32 *Եւ մի՛ պղծիցէք զանուն իմ սուրբ՝ զի ես եմ Տէր. եւ սրբեցայց 'ի մէջ որդւոցն Իսրայէլի. ես եմ Տէր՝ որ սրբեմ զձեզ: 33 *Որ հանի զձեզ յերկրէն Եգիպտացւոց լինել ձեր Աստուած՝ ես եմ Տէր:

‖ 2. Օրէ. 15.21. Եզեկ. 35.14.

ԳԼ.

## Գլ. ԻԳ.

Խօսեցաւ Տր ընդ Մովսեսի և ասէ։ 1
*Խօսեաց ը̅ որդիսն Իսրայէլի 2
և ասասցես ցնոսա. տօնք Տն՝ զորս
անուանիցէք կոչեցեալք սրբոց՝ այսոքիկ են
իմ տօնք։ *Վեց օր գործեսցես ըզ 3
գործ. յաւուրն եօթներորդի շաբաթ
հանգիստ անուանեալ սուրբ Տն. զամ
գործ մի՛ գործիցէք. զի շաբաթ Տն է՝
յամ բնակութե ձերում։ *Այս 4
են տօնք Տն. և նոքա անուանեալք են
սուրբք զորս անուանիցէք ՚ի տօնս նց։

Ելից. 12. 18.
Թւոց. 28. 16.

*Յառաջնում ամսեանն ՚ի տասն և 5
՚ի չորս ամսոյն ՚ի մէջ երեկորեայցն
զատիկ Տն։ *Եւ յաւուրն հնգետա- 6
սաներորդի նորին ամսոյն՝ տօն բա-
ղարջակերաց Տն. զեօթն օր բաղարջ
կերիջիք։ *Եւ օրն առաջին անուա- 7
նեալ սուրբ եղիցի ձեզ. զամ գործ
սպասաւորութե մի՛ առնիցէք։ *Եւ 8
մատուսջիք ողջակէզս Տն զեօթն օր.
և օրն եօթներորդ սբ կոչեցեալ լիցի
ձեզ. զամենայն գործ սպասաւորու-
թե մի՛ գործիցէք։ *Խօսեցաւ Տր ընդ 9
Մովսեսի՝ և ասէ։ *Խօսեաց ընդ որ- 10
դիսն Իսրայէլի՝ և ասասցես ցնս. յոր-
ժամ մտանիցէք յերկիրն՝ զոր ես տաց
ձեզ. և հնձիցէք զհունձս նր, բերի-
ցէք զորայն, զպտուղ հնձոց ձերոց
առ քահանայն։ *Եւ հանցէ զորայն 11
առաջի Տն յընդունելութիւն առ ՚ի
ձէնջ. և ՚ի վաղիւ անդր աւուրն ա-
ռաջնոյ հանցէ զայն քահանայն։ *Եւ 12
արասցէ, յաւուրն յորում մատուսցէ
զորայն, զոչխար անարատ տարեւոր
յողջակէզ Տն։ *Եւ զզոհն իւր եր- 13
կուս տասանորդս ՚ի նաշհոյ զանգելոյ
իւղով զոհ Տն ՚ի հոտ անուշից. և
նուէր նորա չորրորդ մասն դորակի
գինւոյ։ *Եւ պան մի, և զամ մուրկն 14
փխրեալ մի՛ ուտիցէք մինչև յօրն յո-
րում մատուցանիցէք պատարագ Տն
այ ձերոյ՝ օրէն յաւիտենական յազգս
ձեր յամենայն բնակութե ձերում։

2. Օրէ. 16. 9.

*Եւ համարեսջիք ՚ի վաղուէ շաբա- 15
թուն՝ յօրէ յորմէ մատուցանիցէք զո-
րայ ուխտին՝ եօթն եօթներորդս բո-
վանդակս թուիցես։ *Մինչև ցվա- 16
ղիւն յետին եօթներորդին թուիցէք
յիսուն օր. և մատուցանիցէք զոհ նոր
Տն։ *՚Ի բնակութէ ձերմէ մատուցա- 17
նիցէք պանս նուիրի. երկուս պանս.
յերկուց տասանորդաց լինիցի պան
մի. խմորեալք եփեսցին յառաջնոց
արդեանց Տն։ *Եւ մատուցանիցէք 18
ընդ հացին եօթն որոջ անարատ.
տարեւոր. և զուարակ մի յանդոյ. և
խոյս երկուս անարատս. և եղիցին
ողջակէզ Տն. և զոհք նոցա և նուէրք
19 նց, զոհ ՚ի հոտ անուշից Տն։ *Եւ
առնիցէք նոխազ մի յայծեաց վն մե-
ղաց. և երկուս գառինս տարեւորս ՚ի
20 զոհ խաղաղականաց։ *Ընդ պանից
առաջնոց արմտեացն. և նուիրեսցէ
զայն քահանայն նուէր ընդ պանից
առաջնոց արմտեացն յանդիման Տն.
հանդերձ երկու գառամբքն սրբեսցին
Տն. քահանային, որ մատուցանի-
21 ցէ զնս՝ եղիցին։ *Եւ կոչեսջիք զօրն
զայն անուանեալ. կոչեցեալ սուրբ
եղիցի ձեզ։ զամ գործ սպասաւորու-
թե մի՛ գործիցէք ՚ի նմա. օրէն յաւի-
տենական եղիցի յազգս ձեր. յամ
22 բնակութե ձերում։ *Եւ յորժամ

Ղևտ. 19. 9.
2. Օրէ. 24. 19.

հնձիցէք զհունձս երկրի ձերոյ. մի՛ առ-
հասարակ զնշխար հնձոց անդոյն քոյ
՚ի հնձել քում ամփոփիցես. և զան-
կեալն հնձոցն քոց մի՛ ժողովիցես. այլ
աղքատին և պանդխտին թողուցուս
23 զայն. զի ես եմ Տր Այ ձեր։ *Խօսե-
24 ցաւ Տր ընդ Մովսեսի՝ և ասէ։ *Խօ-

Թւոց 29. 1.

սեաց ընդ որդիսն Իսրայէլի՝ և ասաս-
ցես. յամսեանն եօթներորդի՝ որ օր
մի լիցի ամսոյն. եղիցի ձեզ հանգիստ.
յիշատակ փողոց կոչեցեալ սուրբ Տն։
25 *Զամ գործ սպասաւորութեան մի՛
գործիցէք. և մատուցանիցէք զողջա-
26 կէզ Տն։ *Խօսեցաւ Տր ընդ Մովսեսի՝
27 և ասէ։ *՚Ի տասներորդում աւուր

Ղևտ. 16. 29.
Թւոց 29. 7.
Յովհ. 7. 37.

ամսոյն եօթներորդի, որ օր քաւութե է
կոչեցեալ՝ սբ եղիցի ձեզ. և խոնար-
հեցուսջիք զանձինս ձեր (յիններ-
որդ օրէն յերեկորեայ.) և մատուս-
28 ջիք ողջակէզս Տն։ *Զամ գործ մի՛
գործիցէք յաւուր յայնմիկ. զի օր
քաւութե է նա ձեզ. քաւել վն ձեր
29 առաջի Տն Այ ձերոյ։ *Ամ անձն՝
որ ոչ խոնարհեսցի յաւուր յայնմիկ.
սատակեսցի ՚ի ժողովրդենէ իւրմէ։
30 *Եւ ամ անձն՝ որ գործիցէ գործ
յաւուր յայնմիկ՝ կորիցէ անձն այն ՚ի
31 ժողովրդենէ իւրմէ։ *Զամ գործ
մի՛ գործիցէք. օրէն յաւիտենական
եղիցի յազգս ձեր. յամ բնակութիս
32 ձեր։ *Շաբաթ շաբաթուց եղիցի
ձեզ. և խոնարհեցուսջիք զանձինս
ձեր յիններորդէ ամսեանն. յերեկո-
րեայն մինչև ցերեկոյն. շաբաթացու-
33 ցջիք զշաբաթս ձեր։ *Խօսեցաւ Տէր
34 ընդ Մովսեսի՝ և ասէ։ *Խօսեաց ընդ
որդիսն Իսրայէլի՝ և ասասցես. ՚ի հն-
գետասաներորդի աւուր, ամսեանն
եօթներորդի տօն տաղաւարահարաց
35 է զեօթն օր Տն։ *Եւ օրն առաջին
կոչեցեալ սուրբ. զամենայն գործ
սպա-

սպասաւորութեան մի՛ գործիցէք։
* Զեօթն օր մատուցանիջիք ողջա_ 36
կէզս Տն. և օրն եօթներորդ կոչե_
ցեալ սուրբ եղիցի ձեզ. և մատուցա_
նիցէք զողջակէզ Տն. քանզի ելք են.
զամենայն գործ սպասաւորութե մի՛
գործիցէք։ * Այս են տօնք Տն զորս 37
կոչիցէք կոչեցեալ սուրբս. առ 'ի մա_
տուցանելոյ ընծայս Տն զողջակէզս՝ և
զզոհս իւրեանց. և նուէրս օրըստօրէ։
* Առանց շաբաթուց Տն. և առանց 38
ընծայից ձերոց. և առանց ամենայն
ուխտից ձերոց. և առանց կամայա_
կանաց ձերոց՝ զոր տայցէք Տն։ * Եւ 39
'ի հնգետասաներորդում աւուր ամ
սոյն եօթներորդի, յորժամ բովան
դակիցէք զարդիւնս երկրին, տօնես_
ջի՛ք զեօթն օր. յաւուրն առաջնում
հանգիստ. և յաւուրն ութերորդի
հանգիստ։ * Եւ առնուցուք ձեզ յաւ 40
ուրն առաջնում պտուղ զգեղեցիկ
ծառոց. և կողերս յարմաւենեաց. և
ոստս 'ի տերևախիտ ծառոց և յուռ_
եաց. և ոստս հագնեաց 'ի ձորոց՝ ու_
րախ լինիլ առաջի Տն զեօթն օր։
* Եւ տօնեսջի՛ք զնա տօն Տն զեօթն օր 41
տարւոյն. օրէն յաւիտենական յազգս
ձեր. յամսեանն եօթներորդի տօնես
ջի՛ք զնա։ * 'Ի տաղաւարս բնակեսջիք 42
զեօթն օր. ամ̃ բնակքն իլի բնակես
ցին 'ի տաղաւարս։ * Զի դիտասցեն 43
ազգք ձեր՝ եթէ 'ի տաղաւարս բնա_
կեցուցի զորդիսն իսրայէլի 'ի հանելն
իմ զնոսա յերկրէն եգիպտացւոց. ես
եմ Տր Աւ ձեր։ * Եւ պատմեաց մօ_ 44
սէս զտօնս Տն որդւոցն իսրայէլի։

## ԳԼ. ԻԴ.

Խօսեցաւ Տր ընդ մովսիսի՝ և ասէ։ 1
* Պատուիրեա՛ որդւոցն իլի. և 2
առցեն քեզ զիւղ 'ի ձիթենեաց սուրբ
քակակութ 'ի լոյս. զի այրեսցի ճրագ
համապազորդ։ * Արտաքոյ վարագու_ 3
րին 'ի խորանին վկայութե. և լուց_
ցեն զայն ահարոն և որդիք նորա. յե_
րեկորեայ մինչև ցառաւօտ առաջի Տն
անպակաս. օրէն յաւիտենական յազգս
ձեր։ * 'Ի վերայ աշտանակին սրբոյ 4
այրեսցեք ճրագունս առաջի Տն մինչև
ցառաւօտ։ * Եւ առնուցուք նաշիհ. 5
և առնիցէք զայն երկոտասան պան.
յերկուց տասանորդաց լինիցի պան
մի։ * Եւ դնիցէք զնս երկուս նուէրս։ 6
վեց պան զմի նուէրն 'ի վերայ սեղա_
նոյն սրբոյ առաջի Տն։ * Եւ դիցես 'ի 7
վերայ նուէրին կնդրուկ մք՝ և աղ. և
եղիցին 'ի հաց յիշատակի առաջաւոր
Տն։ * Յօրն շաբաթուց դնիցէք առա 8
ջե

ջի Տն համապազորդ յորդւոցն իլի.
9 ուխտ յաւիտենական։ * Եւ եղիցի — Ելից. 29.32.
ահարոնի և որդւոց նորա. և կերիցեն
զայն 'ի սուրբ տեղւոջն. զի սրբութի — Ղև. 8.31.
սրբութեանց է այն նմա 'ի զոհաւորացն
10 Տն, օրէն յաւիտենական։ * Եւ ել որդի — Մտ. 12.4.
կնոջ իսրայելացւոյ. և նա էր որդի
առն եգիպտացւոյ 'ի մէջ որդւոցն իս
րայէլի. և կռուեցան 'ի բանակին. որ
յիսրայէլացւոյ անտի էր՝ և այր մի
11 իսրայելացի։ * Եւ անուանեաց կնոջն
իսրայելացւոյ՝ զանունն անէծ. և ա_
ծին զնա առ մովսէս. և անուն մօր նր
սաղամիթ. դուստր դաբրեայ. յազգէ
12 դանայ։ * Եւ արկին զնա 'ի պահ.
13 դատել զնա հրամանաւ Տն։ * Եւ
խօսեցաւ Տէր ընդ մովսիսի՝ և ասէ։
14 * Հանէ՛ք զայն՝ որ անէծն՝ արտաքոյ
բանակին. և դիցեն՝ որք լուան՝ զձեռս
իւրեանց 'ի վերայ գլխոյ նր. և քարկո
ծեսցեն զնա ամենայն ժողովուրդն։



15 * Եւ ընդ որդիսն իսրայէլի խօսեսցիս՝
և ասասցես ցնոսա. այր ոք՝ այր որ ա_
նիծանիցէ զԱծ, մեղս ընկալցի։
16 * Զի անուանեաց զանունն Տն՝ մա_
հու մեռցի. քարընկէցութք քարկոծ
արասցեն զնա ամ̃ ժողովուրդն. եթէ
պանդուխտ իցէ՝ և թէ բնակ յանուա
նել նորա զանունն Տն սատակեսցի։
17 * Եւ մարդ՝ որ հարկանիցէ զամ̃ — Ելից. 21.12.
զանձն մարդոյ՝ և մեռանիցի, մահու
18 մեռցի և նա։ * Եւ որ հարկանէ զանա
սուն.

սուն . անձն ընդ անձին տուժեսցի ։
19 *Եւ եթէ խեղեսցէ ոք զընկեր իւր . որպէս արարն՝ նոյնպէս արասցի նմա ։

Ելից. 21.24. Օրէ. 19.21. Մատ. 5.38.

20 *Բեկումն ընդ բեկման . ական ընդ ական . ատամն ընդ ատաման . որպէս առնիցէ ոք զխեղութիւն նոյնպէս հատուսցի նմա ։
21 *Եւ որ հարկանիցէ զմարդ՝ և մեռանիցի . մահու մեռցի և նա ։
22 *Իրաւունք մի և նոյն կացցեն եկին, և բնակին . զի ես եմ Տէր Աստուած ձեր ։
23 *Եւ խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իսրայէլի՝ և հանին զայրն՝ որ անէծն՝ արտաքոյ բանակին . և քարկոծ արարին զնա քարամբք ամենայն ժողովուրդն . և որդիքն Իսրայէլի արարին՝ որպէս պատուիրեաց Տէր Մովսիսի ։

## ԳԼ. ԻԵ.

1 Խօսեցաւ Տէր ընդ Մովսիսի՝ 'ի լերինն Սինայ՝ և ասէ ։
2 *Խօսեաց ընդ որդիսն Իսրայէլի՝ և ասասցես ցնոսա ։ եթէ մտանիցէք յերկիրն՝ զոր ես տաց ձեզ . և հանգչիցի երկիրն՝ զոր տաց ձեզ . զի շաբաթ Տեառն է ։

Ելից. 23. 10.

3 *Զվեց ամ վարեսցես զանդ քո և զվեց ամ յատեսցես զայգի քո . և ժողովեսցես զպտուղ նորա ։
4 *Յամին եօթներորդի շաբաթ հանգիստ եղիցի երկրին՝ զի շաբաթ Տեառն է . զանդ քո ո՛չ յատեսցես ։
5 *Եւ զինքնեկն անդոյ քոյ՝ որ գայցէ՝ ո՛չ հնձեսցես . և զխաղող սրբութեան քո ո՛չ կթեսցես . զի ամ հանգստեան է այն երկրին ։
6 *Եւ եղիցի շաբաթ երկրին ձերոյ կերակուր ձեզ . և ծառայի քում . և աղախնոյ քում . և վարձկանին քում . և պանդխտին յեկելոյ 'ի քեզ ։
7 *Եւ անասնոյ քում . և գազանաց, որք իցեն յերկրին քում . եղիցի ամենայն բերն նորա՝ 'ի կերակուր ։
8 *Եւ թուեսցես դու քեզ եօթն հանգիստ ամաց . եօթն ամ եօթնեկին . և եղիցի եօթն եօթներորդքն ամաց՝ քառասուն և ինն ամ ։
9 *Եւ ազդ առնիցէք բարբառով փողոյ յամենայն երկրին ձերում , յամսեանն եօթներորդի՝ որ օր տասն իցէ ամսոյն . յաւուրն քաւութեան ազդ արասջիք փողով ընդ ամենայն երկիրն ձեր ։
10 *Եւ սրբեսջիք զամն յիսներորդ տարւոյն . և քարոզեսջիք թողութիւն 'ի վերայ երկրին՝ ամենայն բնակչաց նորա . զի տարի թողութեան եղիցի ձեզ այն ազդեցութիւն ։ և դարձցի իւրաքանչիւրոք 'ի ստացուած իւր . և իւրաքանչիւրոք յազգ իւր երթիցէ ։
11 *Զի թողութեան ազդեցութիւն է այն ։ ամն յիսներորդ եղիցի ձեզ տարեկան . մի սերմանիցէք . և մի հնձիցէք զինքնեկս նորա՝ որք ելանիցեն . մի կթիցէք զորբեցեալս նորա ։
12 *Զի թողութեան ազդեցութիւն է . սուրբ լիցի ձեզ . 'ի դաշտաց կերիջիք զարմտիս նորա ։
13 *Յամին ազդեցութեան թողութեան նորին դարձցի իւրաքանչիւր ոք 'ի ստացուածս իւր ։
14 *Ապա թէ վաճառեսցէ ոք վաճառ ընկերի իւրում . և ստասցի յընկերէ իւրմէ . մի նեղեսցէ այր զընկեր իւր ։
15 *Ըստ թուոյ ամացն յետ ազդեցութեանն ստասցի յընկերէ իւրմէ՝ ըստ թուոյ ամաց արմտեացն վաճառեսցի քեզ ։
16 *Ըստ յաճախելոյ ամացն յաճախեսցէ զստացուածսն իւր . և ըստ պակասելոյ ամացն պակասեցուսցէ զստացուածսն իւր . զի ըստ թուոյ արդեանցն վաճառեսցէ նա քեզ ։
17 *Մի՛ նեղեսցէ այր զընկեր իւր . և երկնչիցիս 'ի Տեառնէ Աստուծոյ քումմէ . ես եմ Տէր Աստուած ձեր ։
18 *Եւ արասջիք զամենայն զիրաւունս իմ և զամենայն դատաստանս իմ պահեսջիք՝ և արասջիք զնոսա . և բնակեսջիք յերկրին յուսով ։
19 *Եւ տացէ երկիրն զբերս իւր . և կերիջիք յագ . և բնակեսջիք 'ի նմա վստահութեամբ ։
20 *Ապա թէ ասիցէք՝ զինչ կերիցուք յամին եօթներորդի յայնմիկ . եթէ ոչ սերմանիցեմք՝ և ոչ ժողովիցեմք զարմտիս մեր ։
21 *Առաքեցից զօրհնութիւն իմ 'ի ձեզ յամին վեցերորդի . և արասցէ զարդիւնս իւր երից ամաց ։
22 *Եւ սերմանեսջիք յամին ութերորդի . և կերիջիք զհին արդեանցն մինչև յամն իններորդ . մինչև գայցեն արմտիք նորա՝ կերիջիք զհին 'ի հնոյ ։
23 *Եւ երկիրն ոչ վաճառեսցի 'ի հաստատութիւն . զի իմ է երկիրն . քանզի պանդուխտք և նժդեհք էք դուք առաջի իմ ։
24 *Եւ ըստ ամենայն երկրին կալուածոյ ձերոյ փրկանս տասջիք երկրին ։
25 *Եւ եթէ աղքատասցի եղբայր քո՝ որ ընդ քեզ իցէ . և վաճառեսցէ 'ի կալուածոց իւրոց . և եկեսցէ մերձաւորին՝ որ մերձաւոր իցէ նորա . և փրկեսցէ զվաճառ եղբօր իւրոյ ։
26 *Ապա թէ չիցէ ուրուք մերձաւորից . և ձեռնհաս իցէ . և գտանիցի նմա բաւական փրկանաց իւրոց ։
27 *Եւ համարիցի զամս վաճառին իւրոյ . և հատուսցէ կարօղն առն՝ որում վաճառեաց նմա, և դարձցի 'ի կալուածս իւր ։
28 *Ապա թէ ոչ գտցի 'ի ձեռին նորա բաւականն, առ 'ի հատուցանելոյ նմա . եղիցի վաճառն նորա այնմ՝ որ ստացաւն զնա մինչև յամն թողութեան ։ և ելցէ յամին թողութեան . և դարձցի անդրէն 'ի կալուածս իւր ։
29 *Եւ եթէ վաճառեսցէ ոք զտուն բնակութեան 'ի պարսպաւոր քաղաքի . եղիցին փրկանք նորա մինչև 'ի կատարել

տա_

տարւոյն աճուրդն վաճառի նր. օրաԹուրի լինիցին փրկանք նորա։ 30 *Ապա Թէ ոչ փրկիցի՝ մինչեւ լնանիցի նորա տարին ողջոյն, հաստատեսցի տունն՝ որ իցէ 'ի պարսպաւոր քաղաքի՝ հաստատութ ստացողին իւրոյ յազգ իւր՝ եւ ոչ ելցէ 'ի Թողութենն։ 31 *Իսկ տունք, որք յաւանս իցեն. որոց պարիսպ ոչ գուցէ շուրջանակի. ընդ անդս երկրին համարեսցին. եւ հանապազ ընդ փրկանօք լինիցին. եւ 'ի Թողութենն ելցեն։ 32 *Եւ 'ի քաղաքս ղեւտացւոց՝ տունք. որք 'ի քաղաքս կալուածոց նոցա իցեն. ընդ փրկանօք լինիցին հանապազ՝ որք 'ի մէջ ղեւտացւոցն իցեն։ 33 *Եւ որոք փրկիցէ 'ի ղեւտացւոց անտի՝ ելցէ վաճառ տանց քաղաքաց կալուածոց նց 'ի Թողութենն. զի տունք քաղաքացն ղեւտացւոց կալուածք նոցա են այնոքիկ 'ի մէջ որդւոցն իսրայէլի։ 34 *Եւ ագարակքն զատուցեալք 'ի քաղաքս նոցա մի՛ վաճառեսցին. զի կալուած յաւիտենական է այն նոցա։ 35 *Եւ եԹէ աղքատանայցէ եղբայր քո. եւ տկարանայցէ ձեռօք՝ առ քեզ պատսպարեսցես զնա իբրեւ զեկն եւ զպանդուխտ։ եւ կեցցէ եղբայր քո՝ որ ընդ քեզն իցէ։ 36 *Մի առնուցուս 'ի նմանէ վաշխ եւ տոկոսիս. եւ երկնչիցիս 'ի Տե Ածոյ քումմէ՝ զի ես եմ Տր. եւ կեցցէ եղբայր քո ընդ քեզ։ 37 *ԶարծաԹ քո մի՛ տայցես նմա ընդ տոկոսեօք. եւ զկերակուր քո մի՛ տայցես նմա ընդ շարիատիւ։ 38 *Ես եմ Տր Ած ձեր՝ որ հանի զձեզ յերկրէն եգիպտացւոց. տալ ձեզ զերկիրն քանանացւոց. առ 'ի լինելոյ ձեր Ած։ 39 *Եւ եԹէ տնանկեսցի եղբայր քո առ քեզ. եւ վաճառեսցի քեզ. մի՛ ծառայեսցէ քեզ զծառայուԹի ստրկի։ 40 *Իբրեւ զվարձկան, իբրեւ զպանդուխտ եղիցի քեզ. մինչեւ յամի ԹողուԹե գործեսցէ առ քեզ։ 41 *Եւ ելցէ 'ի Թողութենն ինքն՝ եւ որդիք իւր ընդ իւր. եւ դարձցի յազգ իւր. եւ 'ի հայրենի կալուած իւր երԹիցէ։ 42 *Զի ծառայք իմ են նք՝ զոր հանի յերկրէն եգիպտացւոց. մի՛ վաճառեսցի 'ի վաճառ ստրկի։ 43 *Եւ մի՛ տառապեցուսցէ զնա ընդ աշխատուԹբ. եւ երկնչիցես 'ի Տե Ածոյ քումմէ։ 44 *Եւ ծառայ կամ աղախին՝ որչափ եւ լինիցի քեզ յազգացն՝ որք շուրջ զքեւ իցեն, 'ի նոցանէ ստասջիք։ 45 *Եւ յորդւոց պանդխտացն՝ որք 'ի միջի ձերում իցեն, 'ի նոցանէ ստանայցէք՝ եւ յազգականաց նոցա. որչափ ինչ լինիցի յերկրի ձերում՝ եղիցին ձեզ 'ի



46 կալուածս։ *Եւ բաժանեսջիք զնոսա որդւոց ձերոց յետ ձեր. եւ եղիցին ձեզ ստրուկք յաւիտեան. բայց յեղբարց ձերոց յորդւոցն իսրայէլի՝ իւրաքանչիւրոք զեղբայր մի՛ տառապեցուցանիցէք աշխատուԹբք։ 47 *Եւ եԹէ բաւական իցէ ձեռն՝ եկին եւ պանդխտին՝ որ առ քեզ իցէ. եւ չքաւորեալ եղբայր քո վաճառեսցի՝ եկին կամ պանդխտի՝ որ առ քեզ իցէ՝ անդէն ծնելոյ պանդխտին։ 48 *Յետ վաճառելոյն նորա փրկանք լինիցին նմա. մի ոք՝ որ երեւիցի յեղբարց իւրոց՝ փրկեսցէ զնա։ 49 *Եղբայր հօր՝ կամ որդի հօրեղբօր փրկեսցէ զնա. կամ ոք յընտանեաց մարմնոյ իւրոյ 'ի ցեղէ իւրմէ փրկեսցէ զնա։ ապա Թէ իւր իսկ զձեռամբ իցէ՝ ինքն փրկեսցէ զանձն։ 50 *Եւ համարեսցի ընդ ստացողին իւրոյ, յամէ անտի յորում վաճառեցաւ նմա մինչեւ ցամն ԹողուԹե։ եւ եղիցի արծաԹ գնոց նր իբրեւ վարձկանի. 51 ամ յամէ որ չափ իցէ ընդ նմա։ *Եւ եԹէ աւելի եւս քան զայն ամն կայցէ, տացէ զփրկանս իւր յարծաԹոյ ստացուածոյն իւրոյ։ 52 *Եւ եԹէ սակաւ ինչ կայցէ յամաց անտի մինչեւ ցամն ԹողուԹե. համարեսցի իւր ըստ ամացն իւրոց՝ եւ տացէ զփրկանս իւր։ 53 *Իբրեւ զվարձկան ամ յամէ որչափ եւ իցէ ընդ նմա. եւ մի՛ տառապեցուցանիցէ զնա աշխատուԹբ առաջի Տն։ 54 *Ապա Թէ ոչ փրկեսցի ըստ այսմ օրինակի. ելցէ յամին ԹողուԹե ինքն՝ եւ 55 որդիք իւր ընդ նմա։ *Զի իմ են որդիքն իսրայէլի ստրուկք ծառայք իմ, զորս հանի յերկրէն եգիպտացւոց։

## ԳԼ. ԻԶ.

1 ԵՍ եմ Տր Ած ձեր։ ‖մի՛ առնիցէք ձեզ ձեռագործս կամ դրօշեալս. եւ մի՛ կանգնիցէք ձեզ արձանս. եւ մի՛ քար կոԹող դնիցէք յերկրի ձերում երկիրպագանել նմա. ես եմ Տէր 2 Ած ձեր։ *ԶշաբաԹս իմ պահեսջիք. եւ 'ի սրբուԹեանց իմոց երկնչի 3 ջիք. զի ես եմ Տէր։ *‖ԵԹէ ըստ հրամանաց իմոց գնայցէք, եւ զպատուիրանս իմ պահիցէք. եւ առնիցէք զնոսա, տաց ձեզ անձրեւ 'ի ժամանա 4 կի իւրում։ *Եւ երկիրն տացէ զարմիւս իւր. եւ ծառք դաշտաց տացեն 5 զպտուղ իւրեանց։ *Եւ հասանիցեն ձեր կալք 'ի կուԹս. եւ կուԹք 'ի սերմանս հասանիցեն. եւ կերիջիք զհաց ձեր յյագ. եւ բնակեսջիք անհոգու 6 Թբ յերկրի ձերում։ *Եւ տաց զխաղաղուԹիւն յերկիրն ձեր. եւ պատե_

‖ Ղեւտ. 20. 4. 2. Օրէն. 5. 8. Սաղմ. 96. 7.

‖ 2. Օրէն. 28. 1.

րազմ մի՛ անցցէ յերկիր ձեր․ և ննջի
ցէք, և ոչ ոք իցէ՝ որ զարհուրեցու_
ցանիցէ զձեզ։ և կորուսից զգազանս
չարս յերկրէ ձերմէ։ * Եւ հալածես 7
ջիք զթշնամիս ձեր․ և անկանիցին ա_
ռաջի ձեր սպանմամբ։ * Եւ հալա_ 8
ծիցեն ՚ի ձէնջ հինգք զհարիւր․ և հա
րիւրք ՚ի ձէնջ հալածեսցեն զբիւրս։
և անկանիցին առաջի ձեր թշնամիք
ձեր սրով։ * Եւ հայեցայց ՚ի ձեզ․ և 9
աճեցուցից զձեզ․ և հաստատեցից
զուխտ իմ ընդ ձեզ։ * Եւ կերիջիք 10
զհին՝ և զհնոյ հին․ և զհինն յերեսաց
նորոյն հանիջիք ՚ի բաց։ * Եւ հա_ 11
ստատեցից զուխտ իմ ՚ի ձեզ․ և ոչ գար
‖ Բ. Կոր. 6. 16. շեսցի անձն իմ ՚ի ձէնջ։ * ‖ Եւ գնա_ 12
ցից ՚ի ձեզ․ և եղէց ձեր Ա.Ծ․ և դուք
եղիջիք ինձ ժողովուրդ։ * Եւ ես Տր 13
Ա.Ծ. ձեր՝ որ հանի զձեզ յերկրէն ե_
գիպտացւոց․ մինչ էիք դուք ծառայք․
և խզեցի զկապանս լծոյն ձերոյ․ և
ածի զձեզ համարձակութբ։ ‖ Ապա 14
‖ Բ. Օրէ. 28. 15. թէ ոչ լուիցէք ինձ․ և ոչ առնիցէք
զամենայն հրամանս իմ զայսոսիկ։
‖ Մաղաք. 2. 2. * Այլ հեստեցէք սոցա․ և յիրաւանց 15
իմոց տաղտկայցեն անձինք ձեր․ առ_
՚ի չառնելոյ ձեզ զամենայն զպատ_
ուիրանս իմ․ և ցրելոյ զուխտն իմ։ 16
‖ Ողբեր. 2. 17. * ‖ Արարից նոյնպէս և ես ձեզ․ հաս_
տատեցից ՚ի վերայ ձեր տագնապաւ
տարակուսանս․ զքոս՝ և զդալուկն․
որ սորեցուցանիցէ զաչս ձեր․ և հա_
շիցէք յանձինս ձեր․ և սերմանեսջիք
՚ի սնոտիս զսերմանիս ձեր․ և զայն
հակառակորդք ձեր կերիցեն։ * Հաս 17
տատեցից զերեսս իմ ՚ի ձեզ․ և ան_
կանիցիք առաջի թշնամեաց ձերոց․
և հալածեսցեն զձեզ ատելիք ձեր․ և
լինիցիք փախստեայք առանց ուրուք
հալածելոյ զձեզ։ * Եւ եթէ տակա 18
ւին ոչ լուիցէք ինձ․ յաւելից խրատել
զձեզ եօթնպատիկ ՚ի վերայ մեղացն
ձերոց։ * Եւ խորտակեցից զհպար_ 19
տութի ամբարտաւանութե ձերոյ․
և արարից ձեզ զերկինս երկաթի․ և
զերկիր ձեր իբրև պղնձի։ * Եւ եղի 20
ցի ընդունայն զօրութի ձեր․ և մի՛
տացէ երկիր ձեր զսերմանիս ձեր՝ և
մի՛ ծառ վայրաց տացէ զպտուղ իւր։
* Եւ եթէ տակաւին գնայցէք դուք 21
խոտորնակս․ և ոչ կամիցիք լսել ինձ․
յաւելից ձեզ հարուածս եօթնպա_
տիկ ըստ անօրէնութեան ձերում։
* Եւ առաքեցից ՚ի վր̃ ձեր գազանս 22
չարս երկրի․ և կերիցեն զձեզ․ և սա
տակեսցեն զանասուն ձեր։ և նուա_
զուն արարից զձեզ․ և կուրասցին
ճանապարհք ձեր։ * Ապա թէ այնու 23

ևս ոչ խրատիցիք․ այլ տակաւին խո
24 տորնակս գնայցէք ընդ իս։ * Գնա_
ցից և ես ընդ ձեզ բարկութբ խոտոր
նակս․ և հարից զձեզ եօթնպատիկ
25 փոխանակ մեղաց ձերոց։ * Եւ սատա
կեցից զձեզ սրով․ խնդրել զվրէժ
ուխտին։ և եթէ ամրանայցէք ՚ի քա
ղաքս ձեր․ առաքեցից զմահ ՚ի ձեզ․
և մատնեսջիք ՚ի ձեռս թշնամեաց։
26 * Ի նեղել զձեզ ռոճկաւ հացի։ ե_
փեսցեն տասն կին զհացն ձեր ՚ի մի_
ում թոնրի․ և տացեն զհաց ձեր
կշռով․ և կերիջիք և մի՛ յագեսջիք։
27 * Եւ եթէ այնու ևս ոչ լուիցէք ինձ․
այլ գնայցէք ընդ իս խոտորնակս։
28 * Եւ ես գնացից ընդ ձեզ բարկութբ
խոտորնակս․ և խրատեցից զձեզ եօթն
29 պատիկ ըստ մեղաց ձերոց։ * Եւ կե_
րիջիք զմարմինս ուստերաց ձերոց․ և
զմարմինս դստերաց ձերոց կերիջիք։
30 * Եւ կործանեցից զբարձանս ձեր․ և
աւերեցից զփայտեղէն ձեռագործս
ձեր․ և արկից զդիս ձեր զդիակամբք
կռոց ձերոց․ և գարշեսցի անձն իմ ՚ի
31 ձէնջ ։ * Եւ արարից զքաղաքս ձեր
աւերակս․ և թափուր արարից զսր_
բութիւնս ձեր․ և ոչ հոտոտեցայց ՚ի
32 հոտ զոհից ձերոց։ * Եւ աւերեցից
զերկիրն ձեր․ և զարմասցին ընդ նա
թշնամիքն ձեր․ որք բնակեալք իցեն
33 ՚ի նմա ։ * Եւ ցրուեցից զձեզ ընդ
ազգս․ և սատակեսցէ զձեզ սուրն
եկեալ ՚ի վերայ․ և եղիցի երկիրն ձեր
աւերակ․ և քաղաք ձեր թափուր։
34 * Յայնժամ հաճեսցի երկիրն ընդ
շաբաթս իւր զամենայն աւուրս աւե
35 րածոյն իւրոյ ։ * Եւ դուք եղիջիք
յերկրին թշնամեաց ձերոց․ յայն_
ժամ շաբաթասցի երկիրն՝ և հաճես
ցի ընդ շաբաթս իւր ։ զամ աւուրս
աւերածին իւրոյ․ և շաբաթասցի
զշաբաթսն՝ զոր ոչ շաբաթացաւ ՚ի
շաբաթս ձեր․ ՚ի ժամանակի յորում
36 բնակէիքն ՚ի նմա։ * Եւ ՚ի վր̃ մնացե
լոցն ՚ի ձէնջ ածից զդողումն ՚ի սիրտս
նոցա յերկրի թշնամեաց իւրեանց․
և հալածեսցէ զնոսա ձայն տերևոյ
խարխափելոյ․ և փախիցեն՝ որպէս որք
փախչիցին ՚ի պատերազմէ․ և անկա
նիցին առանց ուրուք հալածելոյ։
37 * Եւ թողցէ եղբայր զեղբայր իւր
իբրև ՚ի պատերազմի՝ առանց ուրուք
զհետ մտելոյ․ և ոչ կարիցէք ընդ_
դէմ դառնալ թշնամեաց ձերոց։
38 * Եւ կորնչիցէք ՚ի մէջ ազգաց․ և կե
րիցէ զձեզ երկիրն թշնամեաց ձերոց։
39 * Եւ մնացեալքն ՚ի ձէնջ սատակես_
ցին վասն մեղաց իւրեանց յերկրի
թշնա_

թշնամեաց իւրեանց · և վասն մեղաց հարցն նոցա՝ որք ընդ նոսա մաշիցին։ 40 *Եւ խոստովան լինիցին զմեղս իւրեանց՝ և զհարց իւրեանց՝ զի յանցեան · և արհամարհեցին զիս · և զի գնային առաջի իմ խոտորնակս։ 41 *Եւ ես գնացից ընդ նոսա բարկութբ խոտորնակս · և կորուսից զնս յերկրին թշնամեաց իւրեանց · յայնժամ ամաչեսցէ սիրտ նոցա անթլփատ։ և յայնժամ հաճեսցին ընդ մեղս իւրեանց։

աղօթեսցեն վասն մեղաց·

42 *Եւ յիշեցից զուխտն յակոբայ · և զուխտն իսահակայ · և զուխտն աբրահամու յիշեցից · և զերկիրն յիշեցից։ 43 *Եւ երկիրն լքցի 'ի նոցանէ · յայնժամ ընկալցի երկիրն զշաբաթս իւր՝ յաւերել նր վն նոցա · և նոքա ընկալցին զանօրէնութի իւրեանց · փոխանակ զի զիրաւունս իմ արհամարհեցին · և 'ի հրամանաց իմոց տաղտկացաւ անձն նց։ 44 *Եւ ես մինչդեռ էին յերկրի թշնամեաց իւրեանց՝ ոչ անտես արարի զնոսա · և ոչ տաղտկացայ նոքօք առ 'ի սատակելոյ զնոսա · ցրել զուխտ իմ, որ ընդ նոսա · զի ես եմ Տր Ա.ծ նց։ 45 *Եւ յիշեցից զառաջին ուխտն նց · յորժամ հանի զնոսա յերկրէն եգիպտացւոց 'ի տանէ ծառայութե · առաջի ամենայն ազգաց՝ լինել նց Ա.ծ · զի ես եմ Տր։ Այսքիկ են իրաւունք՝ և հրամանք՝ և օրէնք · զորս ետ Տր 'ի մէջ իւր և 'ի մէջ որդւոյն իսրայելի 'ի լերին սինայ՝ 'ի ձեռն մովսէսի։

## ԳԼ: ԻԷ։

1 Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ։ 2 *Խօսեաց ընդ որդիսն իսրայելի՝ և ասասցես ցնոսա։ որ ոք ուխտեսցէ ուխտ տալ զգին անձին իւրոյ Տն։ 3 *Եղիցին գինք արուի 'ի քսան ամենից մինչև ցվաթսնամեանս · եղիցին գինք նր յիսուն երկդրամեան արծաթոյ · ըստ սրբոյն սկեղն։ 4 *Եւ իգին լիցին գինք երեսուն երկդրամեան։ 5 *Ապա թէ 'ի հնգամենից մինչև ցքսանամեանս՝ լինիցին գինք արուին քսան երկդրամեան · և իգին տասն երկդրամեան։ 6 *Եւ յամսօրէէն մինչև ցհնգեմեանն · և եղիցի արուին հինգ երկդրամեան արծաթոյ · և իգին երեք երկդրամեանք արծաթոյ։ 7 *Ապա թէ 'ի վաթսնամենից և 'ի վեր իցէ · եթէ արու իցէ՝ եղիցին գինք նր հնգետասան երկդրամեան արծաթոյ · և իգին՝ տասն երկդրամեան։ 8 *Ապա թէ աղքատ իցէ 'ի գնոցն · կացցէ առաջի քահանային · և հատցէ նմա քահանայն գին։ և որչափ ինչ 'ի կարի իցէ 'ի ձեռին ուխտաւորին · արկցէ նմա գինս քահանայն։ 9 *Եւ եթէ յանասնոց մատուցանելեաց Տն իցէ պատարագն · որչափ ինչ տացէ 'ի նոցանէ Տն՝ սբ լիցի։ 10 *Եւ մի փոխանակեսցէ զլաւն ընդ յոռւոյն · և մի զյոռին ը լաւին։ Ապա թէ փոխանակելով փոխանակեսցէ զայն անասուն՝ ընդ անասնոյ, եղիցի և այն՝ և փոխանակն սբ Տն։ 11 *Ապա թէ յամ անասնոյ անսրբոյ իցէ, յորոց ոչ մատչիցի պատարագն Ա.Յ՝ կացուսցէ զանասունն առաջի քահանային։ 12 *Եւ արկցէ նմա գինս քահանայն 'ի մէջ լաւին և յոռւոյ · և որպ զիարդ արկցէ նմա գինս քահանայն՝ այն կացցէ։ 13 *Իսկ եթէ փրկելով փրկեսցէ զնա · և զհինգերորդ մասն գնոցն նորա յաւելցէ 'ի նոյն։ 14 *Եւ մարդ ոք՝ որ սրբեսցէ զտուն իւր սրբութի Տն՝ արկցէ նմա գինս քահանայն 'ի մէջ լաւին և յոռւոյ · և որպէս զիարդ արկցէ նմա գինս քահանայն՝ նոյն կացցէ։ 15 *Ապա թէ որ սրբեացն զնա՝ փրկեսցէ զտուն իւր, յաւելցէ զհինգերորդ արծաթոյ գնոցն 'ի նոյն · և նմին իսկ եղիցի։ 16 *Եւ եթէ յանդոյ կալուածոց իւրոց սրբեսցէ ոք ինչ Ա.Յ, եղիցին գինք նր ըստ սերման իւրում · քոռի միոջ գետնոյ եղիցի յիսուն երկդրամեան արծաթոյ։ 17 *Եւ եթէ յամէ թողութեանն սրբեսցէ զանդն իւր · ըստ գնոցն՝ որչափ ինչ իցեն, կացցէ։ 18 *Ապա թէ յետ թողութեն սրբեսցէ զանդն իւր · համարեսցի նմա քահանայն զարծաթն յայլ ևս ամսն՝ մինչև ցամին թողութե · և հատցէ փոքր ինչ 'ի գնոց անտի նորա։ 19 *Ապա թէ փրկեսցէ զանդն՝ որ սրբեացն զնա · յաւելցէ զհինգերորդ մասն արծաթոյն 'ի գինս իւր · և նորա իսկ լիցի։ 20 *Ապա թէ ոչ փրկեսցէ զանդն իւր՝ և վաճառեսցէ զանդն այլում մարդոյ · մի ևս փրկեսցէ։ 21 *Այլ եղիցի անդն ելեալ 'ի թողութեն սուրբ Տն՝ իբրև զերկիր մի զատուցեալ · քահանային եղիցի 'ի կալուած։ 22 *Ապա թէ յանդոյ՝ զոր գնեալ իցէ՝ և չիցէ յիւրոց կալուածոց. սրբեսցէ Տն, 23 *Համարեսցի ընդ նմա քահանայն 'ի գնոյն մինչև ցամին թողութե · և տացէ զգինսն յաւուր յայնմիկ սրբութի Տն։ 24 *Եւ յամին թողութե դարձցի անդն՝ անդրէն առ այրն յորմէ ստացեալ իցէ · որոյ իւր իսկ էր կալուած երկրին։ 25 *Եւ ամ գինք եղիցին ըստ սրբութե կշռոցն ·

Ելից. 30. 13. Թուոց. 3.47. Եզեկ. 45.12.

քսան դանգ լիցի երկդրամեանն։
26 * Եւ զամ անդրանիկ՝ որ ծնանիցի 'ի
խաշանց քոց՝ Տն լիցի. և մի՛ ոք սրբես
ցէ զայն. եթէ արջառ իցէ, և եթէ ոչ
խար՝ Տն լիցի։ 27 * Եւ եթէ 'ի չորքոտա_
նեաց անսրբոց փրկիցէ ըստ գնոց իւր
ոց. զհինգերորդ մասն 'ի նոյն յաւելցէ՝
և նորին լիցի։ ապա թէ ոչ փրկիցի,
վաճառեսցի ըստ գնոց իւրոց։ 28 * Ամ
նուէր՝ զոր նուիրիցէ ոք Տն՝ յամէ
որ ինչ իւր իցէ. 'ի մարդոյ մինչև յա_
նասուն. և յանդոյ մինչև 'ի կալուածս
իւր. մի՛ դարձցի անդրէն, և մի՛ փր_
կեսցի։ ամ նուէր սրբ սրբութեանց լիցի
Տն։ 29 * Ամենայն նուէր՝ որ նուիրեսցի
'ի մարդկանէ, մի՛ փրկեսցի. այլ մա_
հու մեռանիցի։ 30 * Ամենայն տասա_
նորդ յերկրէ 'ի սերմանեաց երկրին.
և 'ի պտղոյ ծառոյ Տն են 'ի սրբու_
թի Տն։ 31 * Եւ եթէ փրկելով փրկես
ցէ զտասանորդ իւր, զհինգերորդ
մասն յաւելցէ 'ի նոյն՝ և նորին լիցի։
32 * Եւ ամ տասանորդ՝ որ մտանիցէ ը
թուով գաւազանի՝ 'ի սրբութի Տն
լիցի։ 33 * Մի՛ լիցի խտիր ընդ բարին և
ընդ յոռին։ և մի՛ փոխանակեսցես զբա
րին ընդ յոռւոյն. ապա թէ փոխանա
կելով փոխանակեսցես. և նա և փոխա
նակն իւր եղիցի սրբ. և մի՛ փրկեսցին։
34 * Այսոքիկ են պատուիրանք՝ զորս
պատուիրեաց Տր Մովսէսի առ որ_
դիսն Իսրայէլի. 'ի լերինն Սինայի։



Այս բանակ Ղեւտացւոց ՚ի մէջ բանակացն, ամէն բանակ եալէն նոյնպէս չուեսցեն, Թուոց 2.17.



Այս հատին անտի ուռ որթոյ եւ ողկոյզ մի խաղո_ ղոյ ՚ի նմա. եւ բարձին զնա լծակօք. 13.24.

# ԳԻՐՔ ԹՈՒՈՑ.

## ՈՐ ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑՒՈՑՆ ԱՍԻ ՎԱՅԵԴԱԲԲԵՐ.

### Գլուխ Առաջներորդ.

Եւ ԽՕՍԵՑԱՒ ՏԷՐ ընդ Մովսէսի՝ ՚յա նապատին սի_ նայի. ՚ի խորա_ նին վկայութեան. ՚ի միում՚ ամ_ սեանն երկրոր_ դի. յամին երկրորդի ելանելոյ նոցա յերկրէն եգիպտացւոց՝ եւ ասէ.

[illegible]

Ելից. 30.12.

2 *Առէք զհամար ամ՚ ժողովրդեան որդւոցն Իսրայէլի. ըստ ազգս՝ ըստ տանց նահապետաց՝ ըստ թուոց յանուանանէ. ըստ գլխոյ նց ։ 3 *Ամենայն արու ՚ի քսանամենից ՚ի վեր, ամ որ ելանիցէ ՚ի զօրս Իսրայէլի, ՚ի հանդէս առնել նց. հանդերձ զօրութիւնս իւրեանց. դու եւ Ահարոն առնիցէք նոցա զհանդէս։ 4 *Եւ ընդ ձեզ լինիցին իւրաքանչիւր ըստ ցեղի. իւրաքանչիւր իշխան՝ ըստ 5 տանց նահապետաց լինիցին ։ *Եւ այս են անուանք արանցն՝ որք յանդի ման լինիցին ընդ ձեզ։ Ռուբենի, Ե_ 6 ղիսուր որդի Սադիուրայ։ *Շմաւո_ նի, Սաղամիէլ որդի Սուրիսադայի։ 7 *Յուդայի՝ Նաասոն որդի Ամինադա 8 բայ։ *Իսաքարայ, Նաթանայէլ որդի 9 Սողգարայ ։ * Զաբուղոնի՝ Եղիաբ 10 որդի Քեղոնայ։ *Որդւոցն Յովսեփայ, Եփրեմի՝ Եղիսամայ որդի Եմիուդայ. Մանասէի, Գամաղիէլ որդի Փադա_ 11 սուրայ։ *Բենիամենի, Աբիդան որ_ 12 դի Գեդեոնի ։ * Դանայ, Աքիեզեր 13 որդի Միսադդայ ։ *Ասերայ, Փա_ 14 գիէլ որդի Եքրանայ։ *Գադայ, Ե_ 15 ղիասափ որդի Ռագուէլի։ * Նեփ_ թաղիմայ, Աքիրէ որդի Ենանայ։

*Արքա

16 *Սոքա են անուանիք ժողովրդեանն. իշխանք ցեղիցն ըստ նահապետացն հազարապետք Իղի: 17 *Եւ առին մովսէս եւ ահարոն զարսն զայնոսիկ՝ որք յանուանէ կոչեցան: 18 *Եւ զամ ժողովն ժողովեցին 'ի միում ամսեանն երկրորդի. յամին երկրորդի: Եւ մտին 'ի համարս ըստ ազգաց իւրեանց ըստ նահապետաց իւրեանց. ըստ թուոց անուանցն նց. 'ի քսանամենից եւ 'ի վեր: ամ արու ըստ գլխոց իւրեանց: 19 *Որպէս հրամայեաց Տր մովսէսի. եւ մտին 'ի համարս յանապատին սինայի: 20 *Եւ եղեն որդիք ռուբենի անդրանկանն իսրայէլի. ըստ ազգս իւրեանց. ըստ գունդս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց իւրեանց. ըստ գլխոց իւրեանց, ամ արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրս Իղի 'ի համարս նց: 21 *Յազգէն ռուբենի, քառասուն եւ վեցհազար եւ հինգ հարիւր: 22 *Եւ որդւոցն շմաւոնի ըստ ազգս իւրեանց. ըստ գունդս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց իւրեանց՝ ըստ գլխոց իւրեանց. ամ արու 'ի քսանամենից եւ 'ի վեր. ամ արու որ ելանէր 'ի զօրս 'ի համարս նց: 23 *Ի ցեղէն շմաւոնի, յիսուն եւ ինն հազար եւ երեք հարիւր: 24 *Եւ որդւոցն յուդայ. ըստ ազգս իւրեանց ըստ գունդս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց նց. ըստ գլխոց իւրեանց. ամ արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրս 'ի համարս նց: 25 *Ի ցեղէն յուդայ եօթանասուն եւ չորք հազարք եւ վեց հարիւր: 26 *Եւ որդւոցն իսաքարայ ըստ ազգս իւրեանց ըստ գունդս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց իւրեանց. ըստ գլխոց իւրեանց՝ ամենայն արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նոցա: 27 *Ի ցեղէն իսաքարայ, յիսուն եւ չորք հազարք եւ չորեքհարիւր: 28 *Եւ որդւոցն զաբուղոնի ըստ գունդս իւրեանց. ըստ ազգս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց իւրեանց. ըստ գլխոց իւրեանց. ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 29 *Ի ցեղէն զաբուղոնի՝ յիսուն եւ եօթն հազար եւ չորեքհարիւր: 30 *Եւ որդւոցն յովսեփայ որդւոց եփրեմայ. ըստ ազգս իւրեանց, ըստ գունդս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց իւրեանց՝ ըստ գլխոց իւրեանց՝ ամ արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 31 *Ի ցեղէն եփրեմի. քառասուն հազար եւ հինգհարիւր: 32 *Եւ որդւոցն մանասէի ըստ ազգս իւրեանց. ըստ գունդս իւրեանց՝ ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց նոցա. ըստ գլխոց իւրեանց՝ ամենայն արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 33 *Ի ցեղէն մանասէի, երեսուն եւ երկու հազար եւ երեք հարիւր: 34 *Եւ որդւոցն բենիամենի. ըստ ազգս իւրեանց՝ ըստ գունդս իւրեանց՝ ըստ տանց նահապետաց իւրեանց՝ ըստ թուոյ անուանց նոցա, ըստ գլխոց իւրեանց՝ ամենայն արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 35 *Ի ցեղէն բենիամենի, երեսուն եւ հինգ հազար եւ չորեքհարիւր: 36 *Եւ որդւոցն գադայ՝ ըստ ազգս իւրեանց. ըստ գունդս իւրեանց՝ ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց նց. ըստ գլխոց իւրեանց. ամենայն արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 37 *Ի ցեղէն գադայ քառասուն եւ հինգ հազար եւ վեց հարիւր եւ յիսուն: 38 *Եւ որդւոցն դանայ՝ ըստ ազգս իւրեանց՝ ըստ գունդս իւրեանց՝ ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց նց. ըստ գլխոց իւրեանց. ամ արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամ որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 39 *Ի ցեղէն դանայ, վաթսուն եւ երկու հազար եւ եօթն հարիւր: 40 *Եւ որդւոցն ասերայ ըստ ազգս իւրեանց. ըստ գունդս իւրեանց՝ ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց նց: ըստ գլխոց իւրեանց : ամ արու 'ի քսանամենից եւ 'ի վեր՝ ամենայն որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նոցա: 41 *Ի ցեղէն ասերայ քառասուն եւ մի հազար. եւ հինգ հարիւր: 42 *Եւ որդւոցն նեփթաղիմայ՝ ըստ ազգս իւրեանց՝ ըստ գունդս իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ թուոյ անուանց նց. ըստ գլխոց իւրեանց, ամենայն արու 'ի քսանամենից եւ 'ի վեր, ամենայն որ ելանէր 'ի զօրու 'ի համարս նց: 43 *Ի ցեղէն նեփթաղիմայ, յիսուն եւ երեք հազար եւ չորեքհարիւր: 44 *Այս է համարս՝ զոր արարին մովսէս եւ ահարոն եւ իշխանքն իսրայէլի. երկոտասան իշխանք՝ այր մի ըստ միում ազգի՝ ըստ ցեղից տանց նահապետաց իւրեանց էին: 45 *Եւ եղեւ ամ համարս որդւոցն

իս-

իսրայէլի հանդերձ զօրու իւրեանց 'ի
քսանամենից և 'ի վեր՝ ամենայն որ ելա
նէր տալ պատերազմ 'ի միջոյ իսրայէ
լի ։ * Եւ եղեն ամ̃ անցեալքն 'ի հան 46
դիսին՝ վեցհարիւր հազար, և երեքհա
զարք և վեց հարիւր և յիսուն ։ * Բայց 47
ղևտացիքն 'ի ցեղէ ազգին իւրեանց
ոչ անցին 'ի հանդիսի ընդ որդիսն իս
րայէլի ։ * Խօսեցաւ Տր̃ ընդ մովսէսի՝ 48
և ասէ ։ * Տեսջի՛ր՝ զազգն ղևեայ մի՛ 49
խառնիցես ընդ նոսա 'ի հանդէս ։ և
զհամար նոցա մի՛ առնուցուս 'ի մէջ
որդւոցդ իսրայէլի ։ * Եւ կացուսցես 50
զղևտացիսն 'ի վ̃ր խորանին վկայու_
թե̃ան և 'ի վերայ ամ̃ կահի նորա ։ և 'ի
վերայ ամի որ ինչ է 'ի նմա ։ նք̃ բարձ
ցեն զխորանն և զամ̃ զկահ նորա ։ և
նոքա պաշտեսցեն 'ի նմա ։ և շուրջ
զխորանաւն բանակեսցին ։ * Եւ 'ի 51
չուել խորանին՝ իջուսցեն զնա ղևտա
ցիքն ։ և 'ի բանակել խորանին՝ կանգ
նեսցեն զնա ղևտացիքն ։ և այլազգի՝
որ մերձեսցի 'ի նա՝ մեռցի ։ * Եւ բա 52
նակեսցին որդիքն իսրայէլի այր ըստ
իւրաքանչիւր կարգի ։ և այր ըստ իւր
աքանչիւր նահապետութե̃ան հանդերձ
զօրու իւրեանց ։ * Բայց ղևտացիքն 53
բանակեսցին շուրջ զխորանաւն վկայ
ութե̃ան յանդիման Տն̃ ։ և ոչ լինիցին
մեղք 'ի մէջ որդւոցն իսրայէլի ։ և պա
հեսցեն ղևտացիքն զպահպանութիւն
խորանին վկայութե̃ան ։ * Եւ արարին 54
որդիքն իսրայէլի ըստ ամենայնի, որպ̃
պատուիրեաց Տր̃ մովսէսի և ահարո_
նի՝ նոյնպէս և արարին ։

## ԳԼ ։ Բ ։

Եւ խօսեցաւ Տր̃ ընդ մովսէսի և ը̃ 1
ահարոնի՝ և ասէ ։ * Այր իւրա 2
քանչիւր զհետ նշանի գնդի իւրոյ՝ ը̃
տանց նահապետաց իւրեանց, ըստ
բանակաց իւրեանց բանակեսցին որ_
դիքն իսրայէլի ։ * Եւ որք յառաջա_ 3
դոյն բանակիցին յարևելից կողմա_
նէ ։ ցեղ բանակին յուդայի իցէ հան_
դերձ զօրուն իւրեանց ։ և իշխան որդ
ւոցն յուդայ նաասոն՝ որդի ամինա
դաբայ ։ * Եւ զօրք նորա անցեալք 'ի 4
հանդիսի, եօթանասուն և չորք հա_
զարք և վեց հարիւր ։ * Եւ որք բա 5
նակիցին զհետ նոցա՝ ցեղն իսաքարայ
իցէ ։ և իշխան որդւոցն իսաքարայ, նա
թանայէլ որդի սողարայ ։ * Եւ զօրք 6
նորա անցեալք 'ի հանդիսին՝ յիսուն և
չորք հազարք և չորեք հարիւր ։ * Եւ 7
բանակեսցին առ նոքօք ցեղն զաբու
ղոնի ։ և իշխան որդւոցն զաբուղոնի
եղիաբ որդի քեղոնի ։ * Եւ զօրք նորա 8



անցեալք 'ի հանդիսին՝ յիսուն և եօթն
9 հազար և չորեքհարիւր ։ * Ամենեքին
անցեալք 'ի հանդիսի բանակին յու_
դայ, հարիւր ութսուն և վեց հազար
և չորեքհարիւր՝ հանդերձ զօրուն իւր
եանց յառաջագոյն չուեսցեն ։
10 * Գունդ բանակին ռուբենի ընդ
հարաւակողմն ։ և զօրք նց̃ ։ և իշխան
որդւոցն ռուբենի, եղիսուր որդի
11 սեդիուրայ ։ * Եւ զօրքն նր̃ անցեալք
'ի հանդիսի՝ քառասուն և վեց հազար
12 և հինգ հարիւր ։ * Եւ բանակեսցին
առ նովաւ ցեղն շմաւոնի ։ և իշխան
որդւոցն շմաւոնի սաղամիէլ որդի
13 սուրիսադայի ։ * Եւ զօրք նր̃ անցեալք
'ի հանդիսի յիսուն և ինն հազար ։
14 * Եւ բանակեալք առ նովաւ ցեղն
գադայ ։ և իշխան որդւոցն գադայ,
15 եղիասափ որդի ռագուէլի ։ * Եւ զօրք
նր̃ անցեալք 'ի հանդիսի քառասուն
և հինգ հազար վեց հարիւր և յիսուն ։
16 * Եւ ամենայն զօրք նր̃ անցեալք 'ի
հանդէս 'ի ցեղին ռուբենի, հարիւր
և յիսուն և մի հազար և չորեքհարիւր
և յիսուն՝ հանդերձ զօրուն իւրեանց
17 երկրորդք չուեսցեն ։ * Եւ խաղասցէ
խորանն վկայութե̃ան ։ և բանակ ղևտաց
ւոցն 'ի մէջ բանակացն՝ որպէս բա
նակեսցին՝ նոյնպէս չուեսցեն իւրա_
քանչիւր զհետ միմեանց ըստ պետու
18 թե̃ան ։ * Եւ գունդ բանակին եփրեմի
ընդ ծովակողմն հանդերձ զօրուն իւր
եանց ։ և իշխան որդւոցն եփրեմի, ե_
19 ղիսամա որդի եմիուդայ ։ * Եւ զօրք
նորա անցեալք 'ի հանդիսի, քառա_
20 սուն հազար և հինգ հարիւր ։ * Եւ
որք բանակիցին զհետ նոցա՝ ցեղն մա
նասէի իցէ ։ և իշխան որդւոցն մանա
սէի՝ գամաղիէլ որդի փադասուրայ ։
21 * Եւ զօրք նորա անցեալք 'ի հանդի_
սի երեսուն և երկու հազարք և երեք
22 հարիւր ։ * Եւ որք բանակիցին զհետ
նոցա՝ գունդն բենիամենի իցէ ։ և իշ_
խան որդւոցն բենիամենի, աբիդան
23 որդի գեդեոնի ։ * Եւ զօրք նր̃ ան_
ցեալք 'ի հանդիսի, երեսուն և հինգ
24 հազար և չորեքհարիւր ։ * Ամենե_
քին անցեալք 'ի հանդիսի բանակին
եփրեմի, հարիւր և ութն հազար և
երկերիւր ։ հանդերձ զօրուն իւրեանց
25 երրորդք չուեսցեն ։ * Եւ գունդ բա
նակին դանայ ընդ հիւսիսի հանդերձ
զօրուն իւրեանց ։ և իշխան որդւոցն
դանայ աքիեզեր որդի ամիսադայի ։
26 * Եւ զօրք նորա անցեալք 'ի հանդի_
սի, վաթսուն և երկու հազարք և
27 եօթն հարիւր ։ * Եւ որք բանակիցին
զհետ նր̃ ազգն ասերայ իցէ ։ և իշխան

որդւոցն ասերայ փագիէլ որդի եքրանայ ։ 28 *Եւ զօրք նորա անցեալք 'ի համարս, քառասուն և մի հազար և հինգ հարիւր ։ 29 *Եւ որք բանակեցան զհետ ն՟ր ցեղն նեփթաղեմի իցէ • և իշխան որդւոցն նեփթաղեմի աքիրէ որդի ենանայ ։ 30 *Եւ զօրք ն՟ր անցեալք 'ի համարս յիսուն և երեք հազարք և չորեքհարիւր ։ 31 *Ամենեքին անցեալք 'ի համարս 'ի բանակին դանայ, հարիւր և յիսուն և եօթն հազար և վեց հարիւր՝ համդերձ զօրուն իւրեանց յետոյ չուեսցեն ըստ գնդս իւրեանց ։ 32 *Այս է համարս որդւոցն իսրայելի • ըստ տանց նահապետաց իւրեանց • ա՟մ համարս բանակացն համդերձ զօրուն իւրեանց • վեց հարիւր հազար, և երեք հազարք, և վեց հարիւր և յիսուն ։ 33 *Բայց ղևտացիքն ոչ անցին ընդ նոսա 'ի համարս • որպէս պատուիրեաց Տ՟ր մովսէսի ։ 34 *Եւ արարին որդիքն իՂի զա՟մ՝ ո՟չ հրամայեաց Տ՟ր մովսէսի՝ այնպէս բանակէին ըստ գնդս իւրեանց • և այնպէս չուէին իւրաքանչիւր զհետ ցեղից իւրեանց • ըստ տանց նահապետաց իւրեանց ։

## Գլ. Գ.

1 Եւ այս ազգք են ահարոնի՝ և մովսէսի • յաւուր յորում խօսեցաւ Տէր ընդ մովսէսի 'ի լերինն սինայի ։ 2 *‖Եւ այս են անուանք որդւոցն ահարոնի • անդրանիկ նադաբ և աբիուդ • եղիազար և իթամար ։ 3 *Եւ այս են անուանք որդւոցն ահարոնի քահանայիցն օծելոց • զորոց կատարեցին զձեռս իւրեանց քահանայանալ ։ 4 *‖Եւ վախճանեցան նադաբ և աբիուդ առաջի Տ՟ն մինչ մատուցանէին զհուրն օտար առաջի Տ՟ն յանապատին սինայի • և որդիք ոչ էին նոցա • և քահանայացան եղիազար և իթամար ընդ ահարոնի ընդ հօրն իւրեանց ։ 5 *Եւ խօսեցաւ Տ՟ր ը՟ մովսէսի՝ և ասէ ։ 6 *Ա՛ռ զազգն ղևեայ • և կացուսցես զնոսա առաջի ահարոնի քահանայի • և պաշտեսցեն զնա ։ 7 *Եւ պահեսցեն զպահպանութիւս նորա • և զպահպանութիւս որդւոցն իՂի առաջի խորանին վկայութեան գործել զգործ խորանին ։ 8 *Եւ պահեսցեն զա՟մ սպաս խորանին վկայութեան • և զպահպանութիւս որդւոցն իսրայելի • և զա՟մ գործ խորանին ։ 9 *Եւ տացես զղևտացիսն ահարոնի եղբօր քում և որդւոց նորա քահանայից • հատուցումն տուեալ իցեն նոքա որդւոցն իսրայելի ։ 10 *Եւ զահարոն և զորդիս նորա կացուսցես 'ի վերայ խորանին վկայութեան ։ և պահեսցեն զքահանայութիւն իւրեանց • և զա՟մ ինչ կսեղանոյն որ ինչ 'ի ներքոյ քան զվարագոյրն իցէ • և այլազգի որ մերձենայցէ, մեռցի ։ 11 *Եւ խօսեցաւ Տ՟ր ընդ մովսէսի՝ և ասէ ։ 12 *Եւ ես ահա առի զղևտացիսն 'ի միջոյ որդւոցն իսրայելի փոխանակ ա՟մ անդրանկան՝ որ բանայ զարգանդ 'ի միջոյ որդւոցն իՂի • փրկանք նոցա լիցին ։ 13 Ինձ ղևտացիքն ։ *Զի ‖իմ է ամենայն անդրանիկ • յաւուր յորում հարի զա՟մ անդրանիկ յերկրին եգիպտացւոց • սրբեցի ինձ զա՟մ անդրանիկս իսրայելի • 'ի մարդոյ մինչև յանասուն իմ լիցին՝ զի ես եմ Տ՟ր ։ 14 *Եւ խօսեցաւ Տ՟ր ը՟ մովսէսի յանապատին սինայի՝ ասէ ։ 15 *Համարեա արա որդւոցն ղևեայ • ըստ տանց նահապետաց • ըստ գնդս իւրեանց • ըստ ազգս իւրեանց ամենայն արուէ՝ և յամսօրէից 'ի վեր առնիցէք համարս ։ 16 *Եւ արարին ն՟ց համարս մովսէս և ահարոն ըստ բարբառոյ Տ՟ն 17 որպէս հրամայեաց ն՟ց Տ՟ր ։ *‖Եւ սոքա են որդիք ղևեայ ըստ անուանց իւրեանց • գերսոն • կահաթ • և մերարի ։ 18 *Եւ այս են անուանք որդւոցն գերսոնի • ըստ գնդս իւրեանց • ղոբենի • և սեմէի ։ 19 *Եւ որդիք կահաթու ըստ գնդս իւրեանց • ամրամ • 20 և իսահառ • և քեբրոն • և ոզիէլ ։ *Եւ որդիք մերարեայ • ըստ գնդս իւրեանց՝ մոողի՝ և մուսի ։ 21 *Սոքա են գունդք ղևտացւոցն • ըստ տանց նահապետաց իւրեանց • գերսոնի գունդն ղոբենեայ • և գունդն սեմեայ • սոքա են 22 գունդք գերսոնի ։ *Եւ համարս ն՟ց ըստ թուոյ ա՟մ արուէի • յամսօրէից և 'ի վեր համարեսն ն՟ց • եօթն հազար և 23 հինգ հարիւր ։ *Եւ այս գունդ գերսոնի՝ յետոյ խորանին ը՟ ծովակողմն 24 բանակեսցին ։ *Եւ իշխան տան նահապետաց գնդին գերսոնի եղիասափան որդի դաելայ ։ 25 *Եւ պահպանութիւն որդւոցն գերսոնի 'ի խորանին 26 վկայութեան ։ *Խորանն, և արտախուրակք՝ և նուարտանք խորանին վկայութեան • և առագաստք սրահին • և վարագոյրք դրան խորանին • և այլ ևս աւելորդ ամենայն գործոյ ն՟ր ։ 27 *Եւ կահաթու գունդ մի ամրամայ • և գունդ մի իսահառայ • և գունդ մի քեբրոնի • և գունդ մի ոզիէլի ։ սոքա են գունդք կահաթու ։ Թուեալք ը՟ 28 անուանց իւրեանց ։ *Ըստ թուոյ ա՟մ արուէի յամսօրէից 'ի վեր • ութ հազար և երեք հարիւր • որք պահէին զպահպանութիւն սրբութեանցն ։

*Եւ

‖ Ելից. 6.23.
‖ Ղևտ. 10.1.2. 1. Մնաց. 24.2.
‖ Ելից. 13.2. Թուոց. 8.16.
‖ Ելից. 6.16.

*Եւ գունդք որդւոցն կահաթու բանակեսցին 'ի կողմանէ խորանին ընդ հարաւ ։ 30 *Եւ իշխան տան նահապետացն գնդին կահաթու, եղիսափան որդի ոզիելի ։ 31 *Եւ պահպանութիւն նց․ տապանակն՝ և սեղանն՝ և աշտանակն․ և զոհանոցքն․ և կահ սրբութենն՝ որովք պաշտէինն․ և սրսկապանն․ և ամ գործի նց ։ 32 *Եւ իշխան 'ի վր իշխանացն ղևտացւոց․ եղիազար որդի ահարոնի քահանայի կացեալ պահել զպահպանութիւս սրբութեցն ։ 33 *Եւ մերարեայ գունդն մոողեայ․ և գունդն մուսեայ․ սոքա են գունդք մերարեայ՝ և համդէս նց ։ 34 *Ըստ թուոյ ամ արուի, յամսօրէից և 'ի վեր․ վեց հազար և երկերիւր ։ 35 *Եւ իշխան տան նահապետաց գնդին մերարեայ․ սուրիել որդի աբիքեայ․ 'ի կողմանէ խորանին բանակեսցին ընդ հարաւ ։ 36 *Եւ համդէս նոցա՝ և պահպանութի որդւոցն մերարեայ, խոյակք խորանին՝ և նիգք նր․ և սիւնակք նր՝ խարիսխք նր՝ և ամ կահ նոցուն․ և գործի նոցին ։ 37 *Եւ սիւնք սրահին շուրջանակի․ և խարիսխք նց․ և ցիցք նոցա․ և ապարանդակք նոցուն ։ 38 *Եւ որք յանդիման խորանին բանակիցին, որք բանակիցին յանդիման խորանին վկայութե յարևելից կողմանէ, մովսէս և ահարոն իցեն․ և որդիք նր պահեսցեն զպահպանութիւս սրբութեց․ 'ի պահպանութիւս որդւոցն իէլի․ և այլազգի որ մերձենայցէ մեռցի ։

39 *Ամ համդէս ղևտացւոցն՝ որոց արարին մովսէս և ահարոն բանիւ տն ըստ գնդս իւրեանց, ամ արու յամսօրէից և 'ի վեր՝ քսան և երկու հազարք ։ 40 *Եւ խօսեցաւ տր ը մովսէսի՝ և ասէ ։ Համդէս արա ամ անդրանկան արուի յորդւոցն իէլի յամսօրէից և 'ի վեր․ և կալ զթիւ նոցա յանուանէ ։ 41 *Եւ առցես զղևտացիսն ինձ՝ զի ես եմ տր՝ փոխանակ ամենայն անդրանկաց որդւոցն իէլի․ և զանասունս ղևտացւոց փոխանակ անասնոց անդրանկաց որդւոցն իէլի ։ 42 *Եւ արար համդէս մովսէս՝ որպէս պատուիրեաց տր՝ ամ անդրանկաց որդւոցն իսրայէլի ։ 43 *Եւ եղեն ամ արուք որդւոցն իսրայէլի, ըստ թուոյ յանուանէ յամսօրէից և 'ի վեր 'ի համդիսէ անտի նր, քսան և երկու հազարք և երկերիւր եօթանասուն և երեք ։ 44 *Եւ խօսեցաւ տր ընդ մովսէսի և ասէ ։ 45 *Առ զղևտացիսն փոխանակ ամ անդրանկաց որդւոցն իսրայէլի․ և զանասունս ղևտացւոց փոխանակ անասնոց նոցա․ և եղիցին ինձ ղևտացիքն՝ զի ես եմ տր ։ 46 *Եւ զփրկանս զերկերիւրոց և զեօթանասնից և զերից աւելորդաց քան զղևտացիսն, յանդրանկաց որդւոցն իսրայէլի ։ 47 *Առցես հինգ սիկղ ըստ գլխոյ․ ըստ սրբութե երկդրամենին ։ ‖ առցես քսան դանկ առ սիկղ ։ 48 *Եւ տացես զարծաթն ահարոնի և որդւոց նորա փրկանս ընդ աւելորդացն 'ի նոցանէ ։ 49 *Եւ էառ մովսէս զարծաթն զփրկանս աւելորդացն 'ի փրկանս ղևտացւոցն ։ 50 *Յանդրանկաց որդւոցն իսրայէլի․ և էառ զարծաթն հազար երեքհարիւր և վաթսուն և հինգ սիկղ ըստ սրբութեան սկեղն ։ 51 *Եւ ետ մովսէս զփրկանս աւելորդացն ահարոնի և որդւոց նորա ըստ բանի տն որպէս հրամայեաց տր մովսէսի ։

‖ Ելից․ 30․13․ Ղևտ․ 27․25․ Այր․ 18․16․ Եզեկ․ 45․12․

## ԳԼ․ Դ․

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի և ընդ ահարոնի և ասէ ։ 2 *Կալ զթիւ գլխոց որդւոցն կահաթու 'ի միջոյ որդւոցն ղևեայ․ ըստ գունդս իւրեանց․ ըստ տանց նահապետաց իւրեանց ։ 3 *'Ի քսան և 'ի հինգ ամենից և 'ի վեր մինչև ց յիսնամեայս․ ամ որ մտանիցէ 'ի սպաս գործել զամ գործ 'ի խորանին վկայութե ։ 4 *Եւ այս իցէ գործ որդւոցն կահաթու 'ի միջոյ որդւոցն ղևեայ․ ըստ գունդս իւրեանց․ ըստ տանց նահապետացն 'ի խորանին վկայութե․ սրբութիւնք սրբութեցն ։ 5 *Եւ մտցէ ահարոն և որդիք իւր յորժամ խաղայցէ բանակն․ և իջուսցեն զվարագոյրն հովանոց․ և ծածկեսցեն նովաւ զտապանակն վկայութե ։ 6 *Եւ դիցեն 'ի վերայ նորա զնուարտանն մաշկեղէն զկապուտակ․ և արկցեն զնովաւ ձորձ համակ կապուտակ 'ի վերուստ կողմանէ․ և ագուսցեն զլծակսն ։ 7 *Եւ 'ի վերայ առաջաւորի սեղանոյն արկցեն հանդերձ համակ ծիրանի․ և զափսէսն՝ և զտուփս՝ և զձնշակս՝ և զնուէլ քանոցսն որովք նուիրիցեն․ և հացքն հանապազորդք 'ի վերայ նր կայցեն ։ 8 *Եւ արկցեն զնովաւ հանդերձ կարմիր․ և ծածկեսցեն զնա մաշկեղէն նուարտանաւ կապուտակաւ․ և ագուսցեն 'ի նմա զլծակսն ։ 9 *Եւ առցեն զհանդերձ կապուտակ՝ և ծածկեսցեն զաշտանակն լուսոյ՝ և զճրագարանսն նր․ և զունելիս նր․ և զբազմականս նորա․ և զամենայն ամանս իւղոյ որովք պաշտիցեն ։ 10 *Եւ արկցեն զնա և զամ զկահ նր 'ի նուարտան մաշկեղէն կապուտակ․

և դիցեն զնա ՚ի վերայ լծակացն։ *11 Եւ զսեղանն ոսկի ծածկեսցեն հանդերձիւ կապուտակաւ՝ և արկցեն ՚ի վերայ նր նուարտանս մաշկեղէնս կապուտակս. և ագուսցեն ՚ի նմա զլծակս նորա։ *12 Եւ առցեն զամ զկահ պաշտամանն՝ որովք պաշտիցեն ՚ի սրբութիւն. և արկցեն ՚ի հանդերձս կապուտակս. և ծածկեսցեն զայն մաշկեղէն նուարտանաւ կապուտակաւ. և դիցեն ՚ի վերայ լծակացն։ *13 Եւ զնու արտանն դիցեն ՚ի վերայ սեղանոյն. և ծածկեսցեն զնա հանդերձիւ համակ ծիրանեով։ *14 Եւ դիցեն ՚ի վր նորա զսպասն. որովք պաշտիցեն ՚ի վերայ նր՝ և զբուրվառս. և զմահանս՝ և զտաշտս. և զծածկիչսն. և զամենայն սպաս սեղանոյն. և արկցեն ՚ի վր նր նուարտան մաշկեղէն կապուտակ. և անցուսցեն ընդ նա զլծակսն։ *15 Եւ առցեն զհանդերձ ծիրանի. և ծածկեսցեն զաւազանն. և զխարիսխս նորա. և արկցեն զնովաւ մաշկ կապուտակ. և դիցեն ՚ի վերայ լծակացն։ և կատարեսցեն ահարոն և որդիք նր ծածկել զսրբութիւս. և զամենայն կահ սրբութեանն ՚ի չուել բանակին՝ և ապա ‖ մտցեն որդիքն կահաթու բառնալ՝ և մի մերձեսցին ՚ի սրբութիւնն՝ զի մի մեռանիցին՝ զայն բառնայցեն որդիքն կահաթու ՚ի խորանէ անտի վկայութեան։

Ծւ. Մնա 15. 15.

*16 Եւ ոստիկան եղիազար որդի ահարոնի քահանայի զիւղն լուսոյ՝ և զխունկն հանդերձանաց. և զզոհն հանապազորդ. և զիւղն օծութեան. և զհանդերձ ամ խորանին՝ և որ ինչ ՚ի նմա. և որ ՚ի սրբութեան. և յամենայն սրբութիւնս։ *17 Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի և ընդ ահարոնի և ասէ։ *18 Մի սատակիցէք զգունդն կահաթու ՚ի միջոյ ղևտացւոցն. զայս ինչ արասջիք նոցա, և կեցցեն՝ և մի մեռանիցին։ *19 ՚Ի մերձենալ նոցա ՚ի սրբութիւն սրբութեացն, ահարոն և որդիք նր մտցեն ՚ի ներքս. և կարգեսցեն զնս իւրաքանչիւր ըստ կարգին իւրում։ *20 Եւ մի մտանիցեն վայրապար տեսանել զսրբութիւն սրբութեցն. զի մի մեռանիցին։ *21 Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ։ *22 Կալ դու զհամար որդւոցն գեդսոնի. ըստ տանց նահապետաց իւրեանց. ըստ գնդից իւրեանց։ *23 ՚Ի քսան և ՚ի հինգ ամենից և ՚ի վեր մինչև ց յիսնամեանս. և արասցես նոցա հանդէս՝ ամ որ մտանիցէ ՚ի սպաս գործել զգործ խորանին վկայութեան։ *24 Այս իցէ սպասաւորութիւն գնդին գեդսոնի. (՚ի մտանել ՚ի հարկ. և ՚ի բառնալ։) *25 Եւ բարձցէ զվերնափեղկս խորանին. և զխորանն վկայութեան՝ և զարտախուրակս նր. և զնուարտանն կապուտակեայ որ ՚ի նմա ՚ի վերուստ կողմանէ. և զվարագոյր խորանին վկայութեան։ *26 Եւ զառագաստս սրահին և որ ինչ ՚ի վերայ խորանին վկայութեան. և զապարօսմն. և զամենայն զկահ սպասուն. և որովք պաշտիցենն։ *27 Եւ արասցեն ըստ բերանոյ ահարոնի և որդւոց նր. եղիցի սպասաւորութիւն որդւոյն գեդսոնի, ըստ ամ սպասաւորութեան իւրեանց. և ըստ ամենայն գործոցն իւրեանց. և արասջիք նոցա հանդէս յանուանէ. և ամի որ ինչ բառնայցի ՚ի նոցանէ։ 28 *Այս իցէ սպասաւորութիւն որդւոցն գեդսոնի ՚ի խորանին վկայութեան. և պահպանութիւն նց ՚ի ձեռն իթամարայ որդւոյ ահարոնի քահանայի։

29 *Եւ որդւոցն մերարեայ ըստ գնդից իւրեանց. ըստ տանց նահապետաց իւրեանց արասջիք զհանդէս։ 30 *՚Ի քսան և ՚ի հինգ ամենից և ՚ի վեր մինչև ց յիսնամեանս՝ արասջի՛ք նց հանդէս. ամենայն որ մտանիցէ ՚ի սպաս գործոյ խորանին վկայութեան։ 31 *Եւ այս իցէ պահպանութիւն բեռանցն՝ որք բառնայցին ՚ի նոցանէ. ըստ ամի գործոյ նոցա ՚ի խորանին վկայութեան. զխոյակս խորանին, և զնիգս, և զըսիւնակս նորա, և զխարիսխս նորա։ 32 *Եւ զսիւնս նց. և զվարագոյր դրան խորանին. և զսիւնս սրահին շուրջանակի. և զխարիսխս նոցա. և զսիւնս վարագուրին դրան սրահին. և զխարիսխս նոցա. և զցիցս նց. և զապարանդակս նոցա. և զամենայն զկահ նոցա, և զամ սպաս նոցա. և յանուանէ հանդէս առնիցէք նոցա. և ամ կահի պահպանութեանն՝ որ բառնայցի ՚ի նոցանէ։ 33 *Այս իցէ սպասաւորութիւն գնդի որդւոցն մերարեայ, յամ գործս իւրեանց. ՚ի խորանին վկայութեան ՚ի ձեռն իթամարայ որդւոյ ահարոնի քահանայի։ 34 *Եւ արարին հանդէս մովսէս և ահարոն և իշխանքն իսրայէլի որդւոցն կահաթու ըստ գնդից իւրեանց։ և ըստ տանց նահապետաց իւրեանց։ 35 *՚Ի քսան և հինգ ամենից և ՚ի վեր մինչև ց յիսնամեանս՝ ամ որ մտանէր ՚ի սպաս՝ և գործէր զգործ ՚ի խորանին վկայութեան։ 36 *Եւ եղև նց հանդէս ըստ գնդից իւրեանց. երկու հազար և եօթն հարիւր և յիսուն։ 37 *Այս է հանդէս գնդին կահաթու. ամենայն որ մտանէր ՚ի սպաս ՚ի խորանն վկայութեան. որպէս և արարին

հան-

հանդէս մովսէս և ահարոն բանիւ ՏՆ
'ի ձեռն մովսէսի: *Եւ անցին 'ի հան- 38
դիսի որդիքն գեդսոնի ըստ գնդից
իւրեանց. ըստ տանց նահապետաց
իւրեանց: *Ի քսան և 'ի հինգ ամե- 39
նից և 'ի վեր մինչև ցյիսնամեանս,
ամ՟ որ մտանէր պաշտել և գործել
զգործ 'ի խորանին վկայութեն: *Եւ 40
եղև հանդէս նոցա ըստ գնդից իւր-
եանց. ըստ տանց նահապետաց իւր-
եանց, երկու հազար վեց հարիւր և
երեսուն: *Այս է հանդէս գնդի որդ- 41
ւոցն գեդսոնի ամ՟ որ պաշտէր 'ի խո-
րանին վկայութեն, որոց արարին հան
դէս՝ մովսէս և ահարոն, ըստ բանի ՏՆ
'ի ձեռն մովսէսի: *Անցին 'ի հանդիսի 42
և գունդք որդւոցն մերարեայ՝ ըստ գն-
դից իւրեանց. ըստ տանց նահապետաց
իւրեանց: *Ի քսան և 'ի հինգ ամե- 43
նից և 'ի վեր մինչև ցյիսնամեանս.
ամ՟ որ մտանէր պաշտել 'ի գործ խո-
րանին վկայութեն: *Եղև հանդէս 44
նց ըստ գնդին իւրեանց՝ ըստ տանց
նահապետաց իւրեանց. երեք հազար
և երկերիւր: *Այս է հանդէս գնդի 45
որդւոցն մերարեայ. որոց արարին
հանդէս մովսէս և ահարոն ըստ բանի
ՏՆ 'ի ձեռն մովսէսի: *Ամենեքին ան 46
ցեալք 'ի հանդիսի. որոց արարին հան
դէս մովսէս և ահարոն և իշխանքն ԻՂԻ
ղևտացւոցն. ըստ գնդից իւրեանց՝
ըստ տանց նահապետաց իւրեանց:
*Ի քսան և 'ի հինգ ամենից 'ի վեր 47
մինչև ցյիսնամեանս. ամ՟ որ մտանէր
'ի գործ սրբութեցն՝ և 'ի գործ կրե-
լեաց խորանին վկայութեն: *Եղեն 48
անցեալք 'ի հանդիսի ութ հազար և
հինգ հարիւր և ութսուն՝ ըստ բանի
ՏՆ: *Արար նց հանդէս ՏՐ 'ի ձեռն 49
մովսէսի. այր ըստ առնէ 'ի վերայ գոր
ծոյ իւրեանց. 'ի վերայ բեռանցն զորս
բնքեանք բառնային, անցին 'ի հանդի
սի՝ որպ՟ հրամայեաց Տէր մովսէսի:

## ԳԼ: Ե:

Խօսեցաւ ՏՐ ընդ մովսէսի՝ և ասէ: 1
*Հրամա՛ն տուր որդւոցն ԻՂԻ. 2
և արձակեսցե՛ն 'ի բաց զամ՟ բորոտ 'ի
բանակէ անտի՝ և զամ՟ սերմնակաթ
պղծեալ յոգի: *Յարուէ մինչև ցէգ. 3
արձակեցէք 'ի բաց 'ի բանակէ անտի.
և մի՛ պղծեսցեն զբանակս իւրեանց՝
յոր ես իջանեմ: *Եւ արարին այն 4
պէս որդիքն իսրայելի. և արձակեցին
զնոսա 'ի բաց 'ի բանակէ անտի. որպ՟
խօսեցաւ ՏՐ ընդ մովսէսի՝ այնպէս ա-
‖Ղևտ. 6. Ի. րարին որդիքն իսրայելի: *Խօսեցաւ 5
ՏՐ ընդ մովսէսի՝ և ասէ: *‖Խօսեա՛ց 6
ընդ որդիսդ իսրայելի՝ և ասասցես.
այր, կամ կին. որ ոք արասցէ յամ՟
մարդկեղէն մեղաց. և արհամարհե-
լով արհամարհիցէ՝ և յանցանիցէ
7 անձն այն: *Խոստովա՛ն լիցի զմեղս
իւր՝ զոր արար. և հատուսցէ ընդ յան
ցանացն զգլուխն. և զհինգերորդ ևս
մասն յաւելցէ 'ի նոյն. և տացէ այնմ
8 որում յանցեաւն: *Ապա թէ չիցէ
ոք առնն մերձաւորիչ հատուցանել
նմա զյանցանաց նորա. և ընդ յան-
ցանացն՝ որինչ ընծայիցի ՏՆ այն քա
հանայինն եղիցի բաց 'ի խոյէ քաւու-
9 թեն՝ որով քաւիցէ վասն իւր: *Եւ
ամենայն պտուղ ըստ ամ՟ի որ սրբիցի
յորդւոցն իսրայելի՝ զոր ինչ մատու-
ցանիցեն ՏՆ քահանայիցն եղիցի:
10 *Եւ յիւրաքանչիւր սրբելոց անտի,
նորա՛ լինիցին. այր ոք՝ որ տացէ քա-
11 հանայինն՝ նորա՛ լինիցի: *Խօսեցաւ
12 Տէր ընդ մովսէսի՝ և ասէ: *Խօսեա՛ց
ընդ որդիսն իսրայելի՝ և ասասցես
ցդոսա. առն ուրուք՝ առն եթէ յան-
ցանիցէ կին իւր՝ և արհամարհիցէ
13 զնա: *Եւ ննջեսցէ ոք ընդ նմա ա-
րութե՟ սերման. և վրիպիցի յաչաց
առն իւրոյ՝ և թաքուցանիցէ. և նա
պղծեալ իցէ. և վկայ ո՛չ գուցէ զնմա-
14 նէ՝ և յղի ո՛չ իցէ: *Եւ հասանիցէ 'ի
վերայ առն նորա ոգի նախանձու. և
նախանձ բերիցէ ընդ կնոջ իւրում. և
նա ո՛չ իցէ պղծեալ. կամ՝ հասանիցէ
'ի վ՟ր նր՟ ոգի նախանձու. և նախանձ
բերիցէ ընդ կնոջ իւրում. և նա իցէ
15 պղծեալ: *Ածցէ այրն զկին իւր առ
քահանայն՝ և մատուսցէ վասն նր՟ քա
հանայն պատարագ, զտասանորդ
գրուի ալեր գարեղէն. և իւղ մի՛ արկ
ցէ 'ի նա. և կնդրուկ մի՛ դիցէ 'ի վերայ
նորա. զի զոհ նախանձաւորութե է.
զոհ յիշատակի. զոհ յիշատակելոյ
16 զմեղս: *Մատուսցէ քահանայն. և կա
17 ցուսցէ զկինն առաջի ՏՆ: *Եւ առ-
ցէ քահանայն ջուր սուրբ կենդանի
խեցեղէն ամանաւ. և 'ի հողոյ անտի՝
որ իցէ առ յատակաւ խորանին վկայ
ութեն՝ առեալ քահանայն արկցէ 'ի
18 ջուրն: *Եւ կացուսցէ քահանայն
զկինն առաջի ՏՆ՝ և մերկացուսցէ՝
զգլուխ կնոջն. և տացէ 'ի ձեռս նորա
զզոհ յիշատակին զզոհ նախանձաւո-
րութեն և 'ի ձեռին քահանային կաց
ցէ ջուրն յանդիմանութե նզովից այ-
19 նորիկ: *Եւ երդմնեցուսցէ զնա քա
հանայն՝ և ասասցէ ցկինն. եթէ չիցէ
ննջեալ ընդ քեզ առն, եթէ չիցես յան
ցուցեալ՝ պղծեալ առ արամբ քով,
քաւեա՛լ լիջիր 'ի ջրոյդ յանդիմանու
թե

թն նզովից այդորիկ: *Ապա թէ յան 20
ցուցեալ իցես առ արամբ քով՝ կամ
պղծեալ իցես. և տուեալ իցէ ուրուք
զարութ իւր 'ի քեզ. առանց առն քոյ:
*Եւ երդմնեցուսցէ քահանայն զկինն 21
երդմամբք նզովից այսորիկ. և ասաս
ցէ քահանայն ցկինն. տացէ զքեզ Տր
'ի նզովս՝ և յերդումն 'ի մէջ ժողովր
դեան քոյ՝ 'ի տալ Տն զբարձս քո՝ 'ի քա
կտուծ. և զորովայն քո յուռուցումն:
*Եւ մտցէ ջուրս նզովեալ յորովայն 22
քո, ուռուցանել զմէջ քո՝ և քակել
զբարձս քո: և ասասցէ կինն. եղիցի
եղիցի: *Եւ գրեսցէ քահանայն 23
զնզովս զայսոսիկ 'ի մատենի. և լուա
ցէ 'ի ջուրն յանդիմանութեան նզովիցն:
*Եւ տացէ ըմպել կնոջն զջուրն յան 24
դիմանութեան նզովիցն: և մտցէ 'ի նա
ջուրն յանդիմանութեան նզովեալ:
*Եւ առցէ քահանայն 'ի ձեռանէ 25
կնոջն զզոհ նախանձաւորութեան: և
դիցէ զզոհն առաջի Տն. և մատուսցէ
առ սեղանն: *Եւ առցէ բուռն քա 26
հանայն 'ի զոհէ յիշատակին նորա. և
հանցէ զայն 'ի սեղանն. և ապա ար
բուսցէ կնոջն զջուրն յանդիմանու
թեան: *Եւ եղիցի եթէ պղծեալ իցէ՝ 27
և ծածկելով ծածկեալ իցէ յառնէն
նորա: և մտանիցէ 'ի նա ջուրն յան
դիմանութեան նզովեալ: ուռուսցէ զո
րովայն նր. և քակեսցին բարձք նր.
և եղիցի կինն 'ի նզովս 'ի մէջ ժողո
վրդեան իւրոյ: *Ապա թէ չիցէ պղ 28
ծեալ կինն՝ և սուրբ իցէ. քաւեալ լիցի՝
և ընկալցի զսերմն: *Այս օրէն իցէ 29
նախանձաւորութեան. որոյ յանցուցեալ
իցէ զկին՝ որ առնականն իցէ՝ և պղծի
ցի: *Կամ այր յորոյ վերայ հասանի 30
ցի ոգի նախանձու. և 'ի նախանձ մտա
նիցէ ընդ կնոջ իւրում: կացուսցէ
զկինն առաջի Տն. և արասցէ նմա քա
հանայն ըստ ամի օրինիս այսորիկ:
*Եւ քաւեալ լիցի այրն 'ի մեղաց ան 31
տի. և կինն ընկալցի զմեղս իւր:

## ԳԼ. Զ.

Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ասէ: 1
*Խօսեաց ը որդիսդ Իսրայէլի՝ 2
և ասասցես: այր, կամ կին. որ մեծ
ինչ ուխտս ուխտեսցէ սրբել զսրբու
թի Տն: *'Ի գինւոյ և 'ի ցքւոյ սրբես 3
ցի. և զքացախ ցքւոյ մի արբցէ. և
զխաղող նր՝ և զչամիչ մի կերիցէ:
*Զամ աւուրս ուխտին իւրոյ յամէ 4
զինչ և լինիցի յորթոյ, զգինի 'ի չամ
չոյ մինչև ցթին մի կերիցէ: *Զամ 5
‖ Դատ. 13.5. աւուրս սրբութեան ‖ սրբիչ մի անցէ
զգլխով իւրով. մինչև լցցին աւուրքն,

զոր ուխտեաց Տն՝ սուրբ կացցէ, աճե
6 ցեալ զվարսս գլխոյ իւրոյ: *Զամ
աւուրս ուխտին իւրոյ Տն, յոգի վախ
7 ճանեալ մի մտցէ: *'Ի հօր. և 'ի մօր.
յեղբօր. և 'ի քեռ. մի պղծեսցի նոքօք
'ի մահու նց. զի ուխտն Տն 'ի վերայ
8 գլխոյ նր է: *Զամ աւուրս ուխտին
9 իւրոյ սուրբ կացցէ Տն: *Եւ եթէ
յանկարծ մեռանիցի ոք 'ի վերայ նր.
առժամայն պղծեսցի ոգի նորա, և
գլուխ ուխտի նր: և գերծցէ զգլուխ
իւր յաւուր յորում սրբեսցի. և յաւ
10 ուրն եօթներորդի գերծցի: *Եւ յաւ
ուրն ութերորդի ածցէ երկուս տատ
րակս, կամ երկուս ձագս աղաւնեաց
առ քահանայն 'ի դուռն խորանին
11 վկայութեան: *Եւ արասցէ քահանայն՝
զմին վասն մեղաց. և զմին յողջակէզ.
և քաւեսցէ վս նորա քահանայն ընդ
մեղացն՝ զոր մեղաւ յոգի. և սրբես
ցէ զգլուխ իւր յաւուր յայնմիկ:
12 *Զի յայնմ աւուր սրբեաց Տն զաւ
ուրս ուխտին իւրոյ: և ածցէ զգառն
մի տարևոր վս յանցանացն. և աւուրքն
առաջինք անհամարք լինիցին. զի պղ
13 ծեցաւ գլուխ ուխտի նր: *Եւ այս
օրէն իցէ ուխտաւորին. յաւուր յո
րում կատարիցէ զաւուրս ուխտի իւրոյ՝
ածցէ 'ի դուրս խորանին վկայութեան:
14 *Եւ մատուսցէ զպատարագն իւր
Տն. գառն մի տարևոր անարատ յող
ջակէզ. և որոջ մի տարևոր անարատ
վասն մեղաց. և խոյ մի անարատ 'ի փր
15 կութն: *Եւ խան մի բաղարջաց նաշ
հոյ. և պանս զանգեալ իւղով. և քա
քարս բաղարջս օծեալս իւղով. և
զզոհս նոցա՝ և զնուէրս իւրեանց:
16 *Եւ մատուսցէ քահանայն առաջի
Տն. և արասցէ զվս մեղացն նոցա. և
17 զողջակէզն նորա: *Եւ զխոյն արաս
ցէ զոհ փրկութեն Տն 'ի վերայ խանին
բաղարջոյ: և արասցէ քահանայն
18 զզոհն նր. և զնուէրս նորա: *‖Եւ ‖Գործ. 21.24.
գերծցէ ուխտաւորն առ դրան խորա
նին վկայութե զգլուխ ուխտին իւրոյ.
և դիցէ զմազն 'ի հուրն, որ 'ի վերայ
19 զոհին փրկութեն: *Եւ առցէ քահա
նայն զերին եփեալ 'ի խոյէ անտի. և
պան մի բաղարջ 'ի խանէն. և քաքար
մի բաղարջ. և դիցէ քահանայն 'ի վր
ձեռաց ուխտաւորին. յետ գերծելոյն
20 նորա զգլուխն իւր: *Եւ մատուսցէ
զայն քահանայն ընծայ առաջի Տն. և
եղիցի սուրբ: քահանային եղիցի 'ի վր
երբծոյն նուիրի. և 'ի վերայ երւոյն
հասի: և ապա արբցէ ուխտաւորն
21 գինի: *Այս օրէն իցէ ուխտաւորի
որ ուխտիցէ ոք Տն. և զպատարագ
իւր

իւր վասն ուխտից ։ Թող զայն՝ որինչ
գտանիցէ ձեռն իւր․ ըստ կարի ուխ
տին իւրոյ՝ զոր ուխտիցէ ըստ օրինի
սրբութեան Տն̄ ։ *Խօսեցաւ Տէր ընդ 22
Մովսէսի՝ և ասէ ։ *Խօսեաց ընդ Ահա 23
րոնի՝ և ընդ որդիս նորա՝ և ասասցես ։
այսպէս օրհնեսջիք զորդիսդ Իղի․ և
ասասջիք նոցա ։ *Օրհնեսցէ զքեզ 24
Տր̄՝ և պահեսցէ զքեզ ։ *Երևեցուս 25
ցէ զերեսս իւր 'ի քեզ՝ և ողորմեսցի
քեզ ։ *Համբարձցէ Տր̄ զերեսս իւր 'ի 26
քեզ․ և տացէ քեզ զխաղաղութիւն ։
*Եւ դիցեն զանուն իմ 'ի վերայ որդ 27
ւոցն Իղի․ և ես Տր̄ օրհնեցից զնս̄ ։

Սիրաք․ 36.19.

## Գլ․ Է ։

Ելից․ 40. 16.

Եւ եղև՝ յաւուր յորում կատա_ 1
րեաց Մովսէս առ 'ի կանգնելոյ
զխորանն․ և եօծ զնա՝ և զամ սպաս
նր̄․ և զզոհանոցն, և զամ սպաս նր̄․
և եօծ զնոսա՝ և սրբեաց զնս̄ ։ *Եւ 2
մատուցին իշխանք Իղի՝ երկոտասան
իշխանք տանց նահապետաց նոցա ։
նոքա էին իշխանք ցեղիցն․ և նոքա
կային 'ի վերայ ատենականութեանն ։
*Եւ մատուցին զընծայս իւրեանց ա_ 3
ռաջի Տն̄ ։ վեց սայլս զարդարեալս ․
և եզինս երկոտասանս․ սայլ մի յեր_
կուց իշխանաց․ և զուարակ յիւրա_
քանչիւրումեքէ․ և ածին առաջի խո
րանին ։ *Խօսեցաւ Տր̄ ընդ Մովսէսի՝ 4
և ասէ ։ *Առ զայդ 'ի դոցանէ․ և ե_ 5
ղիցին 'ի գործ պաշտաւորութեան խո_
րանին վկայութեան ։ և տացես զայդ
ցղևտացիսն․ իւրաքանչիւր ըստ իւր_
ում պաշտաւորութեան ։ *Եւ առեալ 6
Մովսէսի զսայլսն և զեզինսն՝ ետ ցղև_
տացիսն ։ *Զսայլս երկուս՝ և եզինս 7
չորս ետ ցորդիսն Գերսոնի ըստ պաշ
տաւորութեան իւրեանց ։ *Եւ սայլս 8
չորս՝ և եզինս ութ՝ ետ ցորդիսն Մերա
րեայ ըստ պաշտաւորութեան իւրեանց,
'ի ձեռն Իթամարայ որդւոյ Ահարոնի
քահանայի ։ *Եւ ցորդիսն Կահաթու 9
ոչ ինչ ետ․ զի զպաշտաւորութիւն սր_
բութեան սրբութեանցն ունէին․ և յուս
իւրեանց բառնային ։ *Եւ մատուցին 10
իշխանքն 'ի նաւակատիս սեղանոյն ,
յաւուր յորում եօծ զնա․ և բերին իշ
խանքն զընծայս իւրեանց առաջի սե_
ղանոյն ։ *Եւ ասէ Տր̄ ցՄովսէս․ մի մի 11
իշխան․ մի մի օր մատուսցեն զընծայս
իւրեանց 'ի նաւակատիս սեղանոյն ։
*Եւ մատուցանէր զընծայս իւր յաւ 12
ուրն առաջնում Նաասոն որդի Ամի_
նադաբայ՝ իշխան ցեղին Յուդայ ։
*Մատոյց զընծայսն իւր․ կունք մի ար 13
ծաթի՝ 'ի հարիւր և յերեսուն կշռոր_
դէ ։ տաշտ մի արծաթի՝ յեօթանասուն
սկեղէ ըստ սրբութեան սկեղն․ երկոքին
լի նաշհով զանգելով ընդ իւղոյ 'ի զոհ ։
14 *Տուփ մի ոսկի 'ի տասն դահեկանէ լի
15 խնկով ։ *Զուարակ մի յանդոյ․ խոյ
մի․ գառն մի տարևոր յողջակէզ ։
16 *Նոխազ մի յայծեայ վասն մեղաց ։
17 *Եւ 'ի զոհ փրկութեան երինջս երկուս․
խոյս հինգ․ նոխազս հինգ․ որոջս տա
րևորս հինգ ։ այս ընծայ Նաասոնի
18 որդւոյ Ամինադաբայ ։ *Եւ յաւուրն
երկրորդի․ մատոյց Նաթանայէլ որդի
Սովգարայ․ իշխան ցեղին Իսաքարայ ։
19 *Եւ մատոյց զընծայս իւր․ կունք մի
արծաթի 'ի հարիւր և յերեսուն կշռոր
դէ․ տաշտ մի արծաթի՝ յեօթանա_
սուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն ․
երկոքեան լի նաշհով զանգելով ընդ
20 իւղոյ 'ի զոհ ։ *Տուփ մի 'ի տասն դա
21 հեկանէ լի խնկով ։ *Զուարակ մի
յանդոյ․ խոյ մի՝ գառն մի տարևոր՝
22 յողջակէզ ։ *Նոխազ մի յայծեայ վն̄
23 մեղաց ։ *Եւ 'ի զոհ փրկութե երինջս
երկուս․ խոյս հինգ․ նոխազս հինգ․
որոջս տարևորս հինգ ։ այս ընծայ Նա
24 թանայէլի որդւոյ Սովգարայ ։ *Եւ
յաւուրն երրորդի , իշխան որդւոցն
Զաբուղոնի․ Եղիաբ որդի Քելոնի ։
25 *Մատոյց զընծայսն իւր․ կունք մի
արծաթի 'ի հարիւր և յերեսուն կշռոր
դէ․ տաշտ մի արծաթի յեօթանասուն
սկեղէ ըստ սրբութեան սկեղն․ երկոքին
լի նաշհով զանգելով ընդ իւղոյ 'ի
26 զոհ ։ *Տուփ մի 'ի տասն դահեկանէ
27 լի խնկով ։ *Զուարակ մի յանդոյ ․
խոյ մի․ գառն մի տարևոր յողջակէզ ։
28 *Նոխազ մի յայծեայ վասն մեղաց ։
29 *Եւ 'ի զոհ փրկութեան երինջս երկուս․
խոյս հինգ․ նոխազս հինգ․ որոջս տա
րևորս հինգ ։ այս ընծայ Եղիաբու որ
30 դւոյ Քելոնի ։ *Եւ յաւուրն չորրորդի
իշխան որդւոցն Ռուբենի Եղիսուր որ
31 դի Սեդիուրայ ։ *Մատոյց զընծայս
իւր ։ կունք մի արծաթի 'ի հարիւր և
յերեսուն կշռորդէ․ տաշտ մի արծա
թի յեօթանասուն սկեղէ ըստ սրբու
թեան սկեղն ։ երկոքին լի նաշհով զան_
32 գելով ընդ իւղոյ 'ի զոհ ։ *Տուփ մի 'ի
33 տասն դահեկանէ լի խնկով ։ *Զուա
րակ մի յանդոյ․ խոյ մի․ գառն մի տա
34 րևոր յողջակէզ ։ *Եւ նոխազ մի յայ_
35 ծեայ վն̄ մեղաց ։ *Եւ 'ի զոհ փրկու
թեան երինջս երկուս․ խոյս հինգ․ նո_
խազս հինգ․ որոջս տարևորս հինգ ։
այս ընծայ Եղիսուրայ որդւոյ Սեդիու
36 րայ ։ *Եւ յաւուր հինգերորդի՝ իշ_
խան որդւոցն Շմաւոնի․ Սաղամիէլ
37 որդի Սուրիսադայի ։ *Մատոյց զըն

ծայս

ծայս իւր. կոնք մի արծաթի՝ ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի՝ յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *38 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *39 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *40 Եւ նոխազ մի յայծեաց վն մեղաց. *41 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ սաղամիելի որդւոյ սուրի սադայի. *42 Եւ յաւուրն վեցերորդի իշխան որդւոցն գադայ. եղիասափան որդի ռագուէլի. *43 Մատոյց զընծայս իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ. *44 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *45 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *46 Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց. *47 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ եղիասափանայ որդւոյ ռագուէլի. *48 Եւ յաւուրն եօթներորդի, իշխան որդւոցն եփրեմի. եղիսամա որդի սեմիուդայ. *49 Մատոյց զընծայսն իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *50 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *51 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *52 Նոխազ մի յայծեաց վն մեղաց. *53 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ՝ եղիսամայ որդւոյ սեմիուդայ. *54 Եւ յաւուրն ութերորդի իշխան որդւոցն մանասէի. գամաղիէլ՝ որդի փադասուրայ. *55 Մատոյց զընծայսն իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *56 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *57 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *58 Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց. *59 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ գամաղիէլի որդւոյ փադասուրայ. *60 Եւ յաւուրն իններորդի իշխան որդւոցն բենիամենի. աբիդան որդի գեդէօնի. *61 Մատոյց զընծայս իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *62 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *63 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *64 Եւ նոխազ մի յայծեաց վն մեղաց. *65 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ՝ աբիդանայ որդւոյ գեդէօնի. *66 Եւ յաւուրն տասներորդի իշխան որդւոցն դանայ աքիեզեր որդի ամիսադայի. *67 Մատոյց զընծայսն իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *68 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *69 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *70 Եւ նոխազ մի յայծեաց վն մեղաց. *71 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ՝ աքիեզերայ որդւոյ ամիսադայի. *72 Եւ յաւուրն մետասաներորդի իշխան որդւոցն ասերայ՝ փագիէլ՝ որդի եքրանայ. *73 Մատոյց զընծայսն իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *74 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *75 Զուարակ մի յանդոյ՝ խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *76 Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց. *77 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ. նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ. այս ընծայ փագիէլի որդւոյ եքրանայ. *78 Եւ յաւուրն երկոտասաներորդի՝ իշխան որդւոցն նեփթաղիմայ՝ աքիրան որդի ենանայ. *79 Մատոյց զընծայսն իւր. կոնք մի արծաթի ՚ի հարիւր և յերեսուն կշռորդէ. տաշտ մի արծաթի յեօթանասուն սկեղէ ըստ սրբութեան սկեղն. երկոքեան լի նաշհով զանգելով ընդ իւղոյ ՚ի զոհ. *80 Տուփ մի ՚ի տասն դահեկանէ լի խնկով. *81 Զուարակ մի յանդոյ. խոյ մի. գառն մի տարևոր յողջակէզ. *82 Նոխազ մի յայծեաց վասն մեղաց. *83 Եւ ՚ի զոհ փրկութեան երինջս երկուս. խոյս հինգ՝ նոխազս հինգ. որոջս տարևորս հինգ.

այս

այս ընծայ աքիրանայ որդւոյ ենանայ։ 84 *Այս է օրէն նաւակատեաց սեղանոյ յաւուր յորում եօծ զնա. յիշխանաց որդւոցն իսրայէլի, կնիք արծաթիք երկոտասան։ տաշտք արծաթիք երկոտասան։ տուփք երկոտասան։ 85 *Ի հարիւր և յերեսուն սկեղէ կնիք մի։ յեօթանասուն սկեղէ տաշտ մի։ ամենայն արծաթ սպասուցն՝ երկու հազար և չորեքհարիւր սիկղ ըստ սրբութեան սկեղն։ 86 *Տուփք ոսկիք երկոտասանք լի խնկով։ ամենայն ոսկի տփոցն հարիւր և քսան դահեկան։ 87 *Եւ ամ արջառ յողջակէզ։ զուարակք երկոտասանք։ խոյք երկոտասանք։ գառինք տարեւորք անարատք երկոտասանք։ և պոհք նց և նուէրք նոցին։ և նոխազք յայծեաց վասն մեղաց երկոտասանք։ 88 *Եւ ամ արջառք ՚ի զոհ ողջակիզին երկոտասանք։ երինջք քսան և չորս. խոյք վաթսուն. նոխազք վաթսուն. որոջք տարեւորք անարատք վաթսուն։ այս են նաւակատիք սեղանոյն յետ կատարելոյ զձեռս նց։ 89 *Ի մտանել մովսէսի ՚ի խորանն վկայութեան խօսել ընդ նմա։ և լուաւ զձայն Տն ՚ի խօսելն ընդ նմա ՚ի վերուստ ՚ի քաւութենէ անտի ՚ի միջոյ երկուց քերովբէիցն. և խօսէր ընդ նմա։

## ԳԼ: Ը.

1 Եւ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի՝ և ասէ։ 2 *Խօսեաց ը ահարոնի՝ և ասասցես ցնա։ յորժամ դնիցես զճրագունսն ՚ի միոջէ կողմանէ երեսաց աշտանակին, լուցանիցին եօթանեքին ճրագարանքն։ 3 *Եւ արար այնպէս ահարոն։ ՚ի միոջէ կողմանէ հանդէպ աշտանակին ելոյց զճրագարան նորա. որպէս հրամայեաց Տր մովսէսի։ 4 *Եւ այս էր կազմած աշտանակին։ ձոյլ ոսկի բուն նորա. և շուշանք նր ձոյլք համակ. ըստ օրինակին որ եցոյց Տր մովսէսի. այնպէս արարին զաշտանակն։ 5 *Խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ։ 6 *Առ դու զղեւտացիսն ՚ի միջոյ որդւոցն իսրայէլի՝ և սրբեսցես զնս։ 7 *Եւ այսպէս արասցես նց զսրբութիւն իւրեանց։ ցանեսցես զնոքօք ջուր սրբութեան. և ածցի ածելի ՚ի վերայ ամ մարմնոյ նց. և լուասցեն զձորձս իւրեանց. և սրբք եղիցին։ 8 *Եւ առցեն զզուարակ մի յանդոյ. և ըստ նմին զոհ նաշիհ զանգեալ իւղով։ և առցես որթ տարեւոր յանդոյ վասն մեղաց։ 9 *Եւ տարցիս զղեւտացիսն առաջի խորանին վկայութեան. և ժողովեսցես զամ

ժէ

10 ժողովուրդ որդւոցն իսրայէլի։ *Եւ մատուսցես զղեւտացիսն առաջի Տն. և դիցեն որդիքն իէլի զձեռս իւրեանց ՚ի վերայ ղեւտացւոցն։ 11 *Եւ զատուսցէ ահարոն զղեւտացիսն ՚ի հատուցումն առաջի Տն յորդւոցն իսրայէլի. և եղիցին գործել զգործ խորանին առաջի Տն։ 12 *Եւ ղեւտացիքն դիցեն զձեռս իւրեանց ՚ի վր գլխոյ զուարակացն. և արասցես զմին վասն մեղաց. և զմին յողջակէզ Տն քաւել վն նոցա։ 13 *Եւ կացուսցես զղեւտացիսն առաջի Տն. և առաջի ահարոնի. և առաջի որդւոց նր. և տացես զնս հատուցումն առաջի Տն։ 14 *Եւ զատուսցես զղեւտացիսն ՚ի միջոյ որդւոցն իէլի՝ և եղիցին ինձ։ 15 *Եւ ապա մտցեն ղեւտացիքն գործել զգործ խորանին վկայութեան. և սրբեսցես զնս. և տացես զնս հատուցումն առաջի Տն։ 16 *Զի հատուցումն հատուցեալ են նոքա ինձ ՚ի միջոյ որդւոցն իսրայէլի։ ‖փոխանակ ամ անդրանկաց՝ որք բանան զամենայն արգանդ, յորդւոցն իսրայէլի առի զնոսա ինձ։ 17 *Զի իմ է ամ անդրանիկ որդւոցն իսրայէլի. ՚ի մարդոյ մինչև յանասուն. յաւուր յորում հարի զամ անդրանիկ յերկրին եգիպտացւոց. և սրբեցի զնոսա ինձ։ 18 *Եւ առի զղեւտացիսն փոխանակ ամ անդրանկաց որդւոցն իսրայէլի։ 19 *Եւ ետու զղեւտացիսն հատուցումն տուեալս՝ ահարոնի և որդւոց նր՝ ՚ի միջոյ որդւոցն իէլի. գործել զգործ որդւոցն իէլի ՚ի խորանին վկայութեան. և քաւել վն որդւոցն իսրայէլի մերձենալով ՚ի սրբութիւն։ 20 *Եւ արարին մովսէս և ահարոն, և ամ ժողովուրդ որդւոցն իսրայէլի՝ ղեւտացւոցն, որպէս պատուիրեաց Տր մովսէսի վն ղեւտացւոցն. նոյնպէս արարին նց որդիքն իսրայէլի։ 21 *Եւ սրբեցան ղեւտացիքն և լուացին զհանդերձս. և ետուն զնոսին ահարոնի ՚ի հատուցումն առաջի Տն. և քաւեաց վն նց ահարոն սրբել զնս։ 22 *Եւ ապա մտին ղեւտացիքն պաշտել զպաշտօն իւրեանց ՚ի խորանին վկայութեան, առաջի ահարոնի և առաջի որդւոց նր. որպէս պատուիրեաց Տր մովսէսի վն ղեւտացւոցն. նոյնպէս արարին նց։ 23 *Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ։ 24 *Այս ինչ է որ վասն ղեւտացւոցն իցէ։ ՚ի քսան և հինգ ամենից և ՚ի վեր մտցեն գործել ՚ի խորանին վկայութեան։ 25 *Եւ ՚ի յիսնամենից՝ ՚ի բաց կայցեն ՚ի պաշտամանէ անտի. 26 և ոչ ևս գործեսցեն։ *Եւ պաշտեսցէ եղբայր նորա ՚ի խորանին վկայութեան՝

‖Ելից. 13. 2. ‖Եր. 3. 13. Ղուկ. 2. 23.

R պա_

պահել զպահպանութիւս․ բայց գործ ինչ մի՛ գործեսցէ ։ այնպէս արասցես ղեւտացւոցն ՚ի պահպանութիւս իւրեանց։

## ԳԼ․ Թ․

[1] Խօսեցաւ Տր ընդ մովսիսի՝ յանապատին սինայի․ յամին երկրորդի ելանելոյ նոցա յեգիպտոսէ յամսեանն առաջնում՝ և ասէ ։ [2] Ասա՛, և ‖ արասցեն որդիքն իէլի զզատիկն ՚ի ժամանակի իւրում։ [3] Ի չորեքտասաներորդում աւուր ամսոյն առաջնոյ, արասցեն զայն ընդ երեկս ։ ըստ ժամանակս․ ըստ օրինի իւրում․ ըստ պայմանի իւրում առնիցեն զնա ։ [4] Եւ խօսեցաւ մովսէս ընդ որդիսն իսրայէլի առնել զզատիկն։ [5] Ի սկսանել չորեքտասաներորդի աւուր ամսոյն յանապատին սինայի, որպէս հրամայեաց Տէր մովսիսի՝ այնպէս արարին որդիքն իէլի։ [6] Եւ եկին արք որք ո՛չ էին սուրբ ոգւով մարդոյ․ և ո՛չ կարէին առնել զզատիկն յաւուր յայնմիկ ։ [7] Եւ ասեն ցնոսա արքն այնոքիկ․ մեք անսուրբք եմք յոգի մարդոյ ։ արդ մի՛ յետնիցուք ՚ի մատուցանելոյ զպատարագ Տն ՚ի ժամանակի իւրում՝ ՚ի մէջ որդւոցն իսրայէլի ։ [8] Ասէ ցնոսա մովսէս․ կացէք անդր․ և լուայց թէ զինչ տացէ հրաման Տր վասն ձեր ։ [9] Եւ խօսեցաւ Տր ընդ մովսիսի՝ և ասէ ։ [10] Խօսեա՛ց ընդ որդիսդ իսրայէլի՝ և ասասցես․ մարդ ոք, մարդ որ լինիցի անսուրբ յոգի մարդոյ․ և կամ թէ ՚ի հեռի ճանապարհի ոք իցէ ՚ի ձէնջ յազգս ձեր ։ արասցէ զզատիկն Տն։ [11] Յամսեանն երկրորդի․ ՚ի չորեքտասաներորդում աւուր ընդ երեկս՝ արասցէ զնա․ բաղարջով և եղեգով կերիցեն զնա ։ [12] Եւ մի՛ թողուցուն ինչ ՚ի նմանէ յայգ ։ և ‖ զոսկր մի՛ բեկանիցեն ՚ի նմանէ․ ըստ օրինի զատկին արասցեն զնա ։ [13] Եւ մարդ ոք՝ որ սուրբ իցէ․ և ՚ի հեռաւոր ճանապարհի ո՛չ իցէ․ և հեղգասցի առնել զզատիկն, սատակեսցի անձն այն ՚ի ժողովրդենէ իւրմէ ։ զի զպատարագն Տն ո՛չ մատոյց ՚ի ժամանակի իւրում․ զմեղս իւր ընկալցի մարդն այն։ [14] Եւ թէ յարեսցի ՚ի ձեզ եկ ոք յերկրին ձերում, և առնիցէ զզատիկն Տն, ըստ օրինակի զատկին՝ և ըստ պայմանի իւրում արասցէ զնա ։ օրէն մի և նոյն կացցէ ձեզ, եկին և բնակի երկրին ։ [15] ‖ Եւ յաւուրն յորում կանգնեցաւ խորանն, ծածկեաց ամպ զխորանն և զտունն վկայութեան․ և ընդ երեկս լինէր ՚ի խորանին իբրև զտեսիլ հրոյ մինչև ցառաւօտ ։ [17] Եւ յորժամ վերանայր ամպն ՚ի խորանէ անտի՝ ապա չուէին որդիքն իսրայէլի․ և ՚ի տեղւոջ յորում զտեղի առնոյր ամպն՝ անդ բանակէին որդիքն իսրայէլի ։ [18] ‖ Հրամանաւ Տն բանակէին որդիքն իսրայէլի․ և հրամանաւ Տն չուէին։ [19] Զամ աւուրս՝ յորս հովանի ունիցի ամպն ՚ի վր խորանին՝ բանակեսցին որդիքն իէլի ։ և յորժամ ձգիցի ամպն ՚ի վերայ խորանին աւուրս բազումս, պահեսցեն որդիքն իսրայէլի զպահպանութիւն Տն՝ և մի՛ չուեսցեն ։ [20] Եւ եղիցի յորժամ հովանի ունիցի ամպն զաւուրս թուով ՚ի վր խորանին ։ ըստ բանի Տն բանակեսցին․ և ըստ բանի Տն չուեսցեն ։ [21] Եւ եղիցի յորժամ լինիցի ամպն յերեկորեայ մինչև ցառաւօտ․ և եթէ վերանայցէ ամպն ընդ առաւօտն․ չուեսցեն զցերեկ կամ զգիշեր ։ և եթէ ո՛չ վերասցի ամպն՝ ո՛չ չուեսցեն ։ [22] Եւ եթէ ամսօրեայ ժամանակ յաճախիցէ ամպն, և հովանի լիցի ՚ի վր նր, բանակեսցին որդիքն իէլի՝ և մի՛ չուեսցեն ։ [23] Զի ըստ հրամանի Տն չուեսցեն ։ և զպահպանութիւս Տն պահեսցեն հրամանաւ Տն ՚ի ձեռն մովսիսի ։

Ելից. 12.3. — Ելից. 12. 46. Յոհան. 19.36. — Ելից. 40. 16. և 32. Աեր. 7. 1. — Ա Կոր. 10. 1.

## ԳԼ․ Ժ․

[1] Խօսեցաւ Տր ընդ մովսիսի՝ և ասէ ։ [2] Արա՛ դու քեզ երկուս փողս կռածոյս․ արծաթիս արասցես զնս ։ և եղիցին քեզ ազդ առնելոյ ժողովրդեանն, և չուելոյ բանակացն ։ [3] Եւ հարկանիցեն զփող նոքօք․ և ժողովեսցի ամ ժողովուրդն ՚ի դուռն խորանին վկայութե ։ [4] Եւ եթէ ՚ի միում հարկանիցեն փող, եկեսցեն առ քեզ իշխանքն՝ և զօրավարքն իսրայէլի։ [5] Եւ հարջի՛ք զփող ազդեցութե, և չուեսցեն բանակքն բանակեալք ընդ արևելս։ [6] Եւ հարկանիցէք զերկրորդ փողն ազդեցութե, և չուեսցեն բանակքն բանակեալք ընդ հարաւ ։ և հարկանիցէք զերրորդ փողն ազդեցութե, և չուեսցեն բանակքն բանակեալք ընդ ծովակողմն ։ և հարկանիցէք զչորրորդ փողն ազդեցութե, և չուեսցեն բանակքն բանակեալք ընդ հիւսիսի ։ ազդեցութե փող հարկանիցեն ՚ի չուելն իւրեանց ։ [7] Եւ յորժամ ժողովիցէք զժողովուրդն, և հարկանիցէք զփող՝ և ո՛չ ազդեցութե ։ [8] Եւ որդիքն ահարոնի քահանայք հարցեն զփող՝ և եղիցի ձեզ օրէն յաւիտենական յազգս ձեր ։

Եւ

9 Եւ եթէ ելանիցէք 'ի պատերազմ յերկրի ձերում ընդդիմակացացն՝ որք կայցեն ձեզ հակառակ, աղաղակեսջիք փողով՝ և յիշատակեսջիք առաջի Տն̃. և ապրիցէք 'ի թշնամեացն ձերոց։ 10 Եւ յաւուրս ուրախութե ձերոյ՝ և յամսագլուխս ձեր հարկանիցէք ըզփող. և 'ի վերայ ողջակիզացն, և 'ի վ̃ր զոհիցն փրկութեց ձերոց. և եղիցի ձեզ յիշատակ առաջի Աց̃ ձերոյ. ես եմ Տր̃ Ած̃ ձեր։ 11 Եւ եղև յամին երկրորդի յամսեանն երկրորդում. որ օր քսան էր ամսոյն՝ վերացաւ ամպն 'ի խորանէն վկայութե։ 12 Եւ չուեցին որդիքն Իղ̃ի համդերձ աղխիւքն իւրեանց յանապատէն Սինայի։ և եկաց ամպն յանապատին Փառանու։ 13 Եւ չուեցին որդիքն Իսրայէլի ըստ բանի Տն̃ 'ի ձեռն Մովսէսի։ 14 ‖ Եւ չուեցին նախ գունդք բանակի որդւոցն Յուդայ յառաջագոյն զօրուն իւրեանց. և 'ի վերայ զօրացն նց̃ Նաասոն որդի Ամինադաբայ։ 15 Եւ 'ի վ̃ր զօրուց որդւոցն Իսաքարայ՝ Նաթանայէլ՝ որդի Սողարայ։ 16 Եւ 'ի վերայ զօրու ցեղի որդւոցն Զաբուղոնի՝ Եղիաբ որդի Քեղոնի։ 17 Եւ իջուցանէին զխորանն. և չուէին։ որդիքն Գերսոնի և որդիք Մերարեայ բառնային զխորանն։ 18 Եւ չուէին գունդք բանակի որդւոցն Ռուբենի համդերձ զօրուն իւրեանց. 'ի վերայ զօրու նոցա Եղիսուր որդի Սեդիուրայ։ 19 Եւ 'ի վ̃ր զօրու ցեղի որդւոցն Շմաւոնի՝ Սաղամիէլ՝ որդի Սուրիսադայի։ 20 Եւ 'ի վերայ զօրու ցեղի որդւոցն Գադայ՝ Եղիասափ որդի Ռագուէլի։ 21 Եւ չուեսցեն որդիքն Կահաթու բարձեալ զսրբութիւն. և կանգնեսցեն զխորանն մինչև այլքն հասանիցեն։ 22 Եւ չուեսցեն գունդք բանակին Եփրեմայ համդերձ զօրուն իւրեանց. և 'ի վերայ զօրու նց̃ Եղիսամա որդի Սեմիուդայ։ 23 Եւ 'ի վերայ զօրու ցեղի որդւոցն Մանասէի Գամաղիէլ՝ որդի Փադասուրայ։ 24 Եւ 'ի վ̃ր ցեղի որդւոցն Բենիամենի Աբիդան որդի Գեդէոնի։ 25 Եւ չուեսցեն գունդք բանակի որդւոցն Դանայ յետոյ քան զա̃մ բանակսն համդերձ զօրուն իւրեանց։ և 'ի վերայ զօրու նց̃ Աքիեզեր որդի Ամիսադայի։ 26 Եւ 'ի վ̃ր ցեղի որդւոցն Ասերայ Փագիէլ որդի Եքրանայ։ 27 Եւ 'ի վ̃ր ցեղի որդւոցն Նեփթաղիմայ Աքիրան որդի Ենանայ։ 28 Այս են զօրք որդւոցն Իղ̃ի։ և չուեցին համդերձ զօրուն իւրեանց։ 29 Եւ ասէ Մովսէս ցՅոբաբ որդի Ռագուէլի Մադիանացի ցաներն իւր։ Աչա մեք չուեմք 'ի տեղին՝ զոր ասաց Տր̃ տալ զնա մեզ. եկ ընդ մեզ. և բարի արասցուք քեզ։ զի Տր̃ խոստացաւ բարութիւն Իղ̃ի։ 30 Եւ նա ասէ. ոչ երթայց անդր. այլ յերկիրն իմ՝ և յազգ իմ գնացից։ 31 Եւ ասէ ցնա. մի թողուր զմեզ. քանզի էիր ընդ մեզ յանապատին. և եղիցիս ընդ մեզ ծեր։ 32 Եւ եղիցի թէ երթայցես ընդ մեզ, և լինիցին բարութիւքն՝ զորինչ արասցէ մեզ Տր̃ բարի, արասցուք և քեզ։ 33 Եւ չուեցին 'ի լեռնէ անտի Տն̃ երեք օրեայ ճանապարհ. և տապանակ ուխտին Տն̃ յառաջագոյն քան զնոսա երթայր երեքօրեայ ճանապարհաւ, դիտել նոցա հանգիստ։ 34 Եւ ամպն հովանի ունէր 'ի վ̃ր նոցա 'ի տուէ 'ի չուել նց̃ 'ի բանակէ անտի։ 35 Եւ եղև 'ի չուել տապանակին՝ ասէ Մովսէս։ ‖ Արի Տր̃՝ և ցրուեսցին թշնամիք քո՝ փախիցեն ամենայն ատելիք քո յերեսաց քոց։ 36 Եւ 'ի դադարելն ասէ։ դարձիր Տր̃ 'ի հազարաւորս և 'ի բիւրաւորս Իսրայէլի։

‖ Սաղ. 67.2.

## Գլ: ԺԱ.

1 Եւ ժողովուրդն ‖ տրտնջէր չարաչար առաջի Տն̃. և լուաւ Տր̃ և բարկացաւ սրտմտութբ̃։ ‖ և բորբոքեցաւ 'ի նոսա հուր 'ի Տէ̃։ և եկեր զմասն ինչ բանակին։ 2 Եւ աղաղակեաց ժողովուրդն առ Մովսէս. և յաղօթս եկաց Մովսէս առ Տր̃. և դադարեաց հուրն։ 3 Եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ Հրայրեաց։ զի բորբոքեցաւ 'ի նոսա հուրն 'ի Տէ̃։ 4 Եւ խառնիճաղանճն՝ որ էր 'ի մէջ նոցա՝ ցանկացան զցանկութի. և նստեալ լային որդիքն Իսրայէլի՝ և ասէին. ‖ ո՞ տացէ մեզ միս ուտել։ 5 Օ յիշեցաք զձուկն՝ զոր ուտէաք յԵգիպտոս ձրի. և զսեխն. և զմեղրապոպ. և զպրասն. և զսոխ. և զխստոր։ 6 Եւ արդ անձնիկ նքօղեալ են անձինք մեր. և ոչ ուրեք՝ բայց միայն 'ի մանանայն են աչք մեր։ 7 ‖ Եւ մանանայն էր իբրև զսերմն գինձոյ սպիտակ. և տեսիլ նորա իբրև զտեսիլ սառին։ 8 Եւ շրջէր ժողովուրդն՝ և քաղէին. և աղային յերկանի. և լեռուին յանկանի. և եփէին 'ի պուտան. և առնէին նկանս. և էր քաղցրութի նորա իբրև զխորխոխ իւղոյ և մեղու։ 9 Եւ յորժամ իջանէր ցօղ 'ի բանակն ըզ ցայգ՝ իջանէր և մանանայն 'ի վ̃ր նր̃։ 10 Եւ լուաւ Մովսէս զլալիւն նց̃ ըստ գնդից իւրեանց, զիւրաքանչիւրն առ դրան վրանի իւրոյ։ և բարկացաւ սրտմտու

‖ Սաղ. 77.19. ‖ 1. Կոր. 10.10. ‖ Սաղ. 77.21. ‖ 1. Կոր. 10.3. ‖ Ել. 16.14. Սաղ. 77.24. Իմաս. 16.20. Յով. 6.31.

‖ Վեր. 1.7.

թէ յոյժ։ և առաջի մովսէսի չար թուեցաւ ։ * Եւ ասէ մովսէս ցՏր ։ ընդէ՞ր Տր չարչարեցեր զծառայ քո, և հիմ ոչ գտի շնորհս առաջի քո, արկանել զբեռն զբարկութի ժողովրդեանս այսորիկ ։ * Միթէ ես յղացայ զամ ժողովուրդս զայս․ կամ թէ ես ծնայ զսոսա ։ զի ասես ցիս՝ թէ առ զդա 'ի գոգ քո, որպէս առնուցու դայեակ զստնդիեաց․ տանիլ յերկիրն զոր երդուար հարցն նց ։ * Եւ արդ ուստի է ինձ միս տալ ամ ժողովրդեանս այսմիկ․ զի լան զինև՝ և ասեն՝ տուր մեզ միս՝ զի կերիցուք ։ * Ոչ կարեմ ես միայն կրել զժողովուրդս զայս՝ զի ծանրագոյն քան զիս է բանդ ։ * Եթէ այդպէս առնիցես ընդ իս՝ սպան իսկ զիս՝ եթէ հաճոյ իցէ քեզ՝ եթէ գտի շնորհս և ողորմութի առ 'ի քէն․ զի մի տեսից զչարչարանս իմ ։ * Եւ ասէ Տր ցմովսէս․ ժողովեա ինձ զեօթանասուն այր 'ի ծերոցն իղի․ զոր դու գիտես՝ եթէ նոքա իցեն ծերագոյնք ժողովրդեանն․ և ընտիրք նոցա․ և հանցես զնս 'ի խորանն վկայութե․ և կացցեն անդ ընդ քեզ ։ * Եւ իջից անդր․ և խօսեցայց ընդ քեզ․ և առից 'ի հոգւոյդ՝ որ 'ի քեզ է՝ և արկից զնոքօք․ և բարձցեն ընդ քեզ զյանդգնութի ժողովրդեանդ այդորիկ ։ և ոչ կրեսցես զդոսա դու միայն ։ * Եւ ցժողովուրդն ասասցես․ սրբեցարուք առ վաղիւ․ կերիջիք միս․ լացէք առաջի Տն՝ և ասացէք․ ո՞ ջամբեսցէ մեզ միս․ զի լաւ էր մեզ յեգիպտոս․ և տացէ ձեզ Տր միս ուտելոյ․ և կերիջիք միս ։ * Ոչ զմի օր ուտիցէք․ և ոչ զերկուս․ և ոչ զհինգ օր․ և ոչ զտասն․ և ոչ զքսան օր ։ * Այլ զամսօրեայ աւուրս ուտիցէք՝ մինչև ելանիցէ ընդ ռնգունս ձեր․ եղիցի ձեզ 'ի դառնութի․ զի հեստեցիք Տն՝ որ է 'ի միջի ձերում․ լայք առաջի նորա՝ և ասէք՝ ընդէ՞ր էր մեզ ելանելն յեգիպտոսէ ։ * Եւ ասէ մովսէս՝ վեցհարիւր հազար հետևակաց է ժողովուրդն՝ յորոց միջի եմ ես․ և դու ասես՝ միս տաց նոցա․ և կերիցեն ամսօրեայ ժամանակաւ ։ * Միթէ արջառ և ոչխար սպանանիցի՝ և բաւական լինիցի նց ։ կամ թէ ամ ձուկն ծովու ժողովիցի՝ և բաւական լինիցի նց ։ * Եւ ասէ Տր ցմովսէս․ մի թէ ձեռն Տն չիցէ՞ բաւական․ այժմ տեսանիցես՝ եթէ հասանիցէ 'ի վր քո բանս իմ՝ եթէ ոչ ։ * Եւ ել մովսէս՝ և խօսեցաւ ընդ ժողովրդեանն զպատգամս Տն․ և ժողովեաց զեօթանասուն այր 'ի ծերոց ժողովրդեանն․ և կացոյց զնս շուրջ զխորանաւն ։ * Եւ էջ Տր ամպով, և խօսեցաւ ընդ մովսէսի․ և էառ 'ի հոգւոյն որ 'ի նմա․ և եդ 'ի վերայ եօթանասուն արանց երիցուցն․ և իբրև հանգեաւ հոգին 'ի վր նց․ և մարգարէացան 'ի բանակին․ և այլ ոչ ևս յաւելին ։ * Եւ մնացին երկու արք 'ի բանակին․ անուն միոյն ելդադ․ և անուն երկրորդին մովդադ․ և հանգեաւ 'ի վր նոցա հոգին․ և նոքա էին 'ի գրելոց անտի․ և ոչ եկին 'ի խորանն ։ * Եւ մարգարէացան 'ի բանակին․ և ընթացեալ պատանի մի պատմեաց մովսէսի՝ և ասէ ցնա․ ելդադ և մովդադ մարգարէանան 'ի բանակին ։ * Պատասխանի տուեալ յեսուայ որդւոյ նաւեայ պաշտօնէին մովսէսի ընտրելոյ՝ ասէ ։ տէր մովսէս․ արգել զնոսա ։ * Եւ ասէ ցնա մովսէս․ մի՞ արկաներ դու ինձ նախանձուկս ։ և ո՞ տայր զամ ժողովուրդս Տն մարգարէս․ յորժամ տայր Տր զհոգին իւր 'ի վերայ նոցա ։ * Եւ գնաց մովսէս 'ի բանակն․ ինքն և ծերքն իղի ։ * Եւ ել հողմ 'ի Տէ և խաղացոյց յայս կոյս զլորամարգին 'ի ծովէն․ և անկաւ զբանակաւն․ աւուր գնաց աստի, և աւուր գնաց անտի, շուրջ զբանակաւն․ իբրև ցերկուս կանգունս յերկրէ ։ * Եւ յարուցեալ ժողովուրդն՝ զտիւն ողջոյն․ և զգիշերն ողջոյն․ և զտիւն ողջոյն 'ի վաղիւ անդր․ ժողովեցին զլորամարգին․ որ սակաւ ժողովեաց՝ տասն քոռ․ և սպանին, և ապխտեցին իւրեանց ապուխտս շուրջ զբանակաւն ։ * Մինչդեռ միսն յատամունս նց էր՝ յառաջ քան զպակասելն․ և Տր բարկացաւ ժողովրդեանն․ և եհար Տր զժողովուրդն հարուածս մեծամեծս յոյժ ։ * Եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ գերեզմանք ցանկութե․ զի անդ թաղեցին զժողովուրդն ցանկացօղ ։ և 'ի գերեզմանացն ցանկութե չուեաց ժողովուրդն յասերօթ ։

## ԳԼ ։ ԺԲ ։

Եւ բամբասեցին մարիամ և ահարոն զմովսէս վասն կնոջն եթովպացւոյ՝ զոր էառ մովսէս․ զի կին եթովպացի էառ ։ * Եւ ասեն՝ մի թէ ընդ մովսէսի՞ միայն խօսեցաւ Տր․ ո՞չ ապաքէն և ընդ մեզ խօսեցաւ ։ և լուաւ Տր ։ * (Եւ այրն մովսէս հեզ էր յոյժ քան զամ մարդիկ՝ որք էին 'ի վերայ երկրի)։ * Եւ ասէ Տր նոյնժամայն ցմովսէս և ցահարոն և ցմարիամ ։ ելէք դուք երեքին 'ի խորանն վկայութե ։

և

և ելին երեքին 'ի խորանն վկայութեան: 5 *Եւ էջ Տէր սեամբ ամպոյ՝ և եկաց առ դրան խորանին վկայութեան: և կոչեցան ահարոն և մարիամ: և ելին երկոքեան: 6 *Եւ ասէ ցնս Տր: լուարուք բանից իմոց. եթէ լինիցի մարգարէ 'ի ձէնջ Տն, տեսլեամբ երևեցայց նմա. և երազով խօսեցայց ընդ նմա: 7 *Ոչ այնպէս ոպ ծառայն իմ մովսէս՝ ‖ որ յամենայն տան իմում հաւատարիմ է: 8 *‖Բերան 'ի բերան խօսեցայց ընդ նմա. երևօք և ոչ առակօք: և զփառսն Տն ետես: և ընդէ՞ր ոչ երկերուք բամբասել զծառայն իմ զմովսէս: 9 *Եւ եղև բարկութիւն սրտմտութեան Տն 'ի վերայ նց՝ և գնացին: 10 *Եւ ամպն վերացաւ 'ի խորանէ անտի: և ահա մարիամ բորոտեալ էր իբրև զձիւն. և հայեցաւ ահարոն ի մարիամ, և ահա բորոտեալ էր: 11 *Եւ ասէ ահարոն ցմովսէս. խնդրեմ 'ի քէն Տր. մի՛ ածեր 'ի վերայ մեզ. զի անգիտացաք. քանզի մեղաք: 12 *Մի՛ լինիցի հանգոյն մահու իբրև զվիժած՝ որ ելանիցէ յարգանդէ մօր՝ և ուտիցէ զկէս մարմնոյ նր: 13 *Եւ աղաղակեաց մովսէս առ Տր՝ և ասէ: խնդրեմ 'ի քէն Տր. բժշկեա՛ զնա: 14 *Եւ ասէ Տր ցմովսէս: եթէ հօր իւրոյ թքանելով թքեալ էր ընդ երեսս նորա՝ չամաչէ՞ր զեօթն օր: մեկնեսցի զեօթն օր արտաքոյ բանակին՝ և ապա մտցէ: 15 *Եւ զատուցաւ մարիամ արտաքոյ բանակին զեօթն օր: և ժողովուրդն ո՛չ չուեաց՝ մինչև սրբեցաւ մարիամ:

‖Եբր. 3. 2.

‖Ելից. 33.11.

## ԳԼ: ԺԳ.

1 Եւ ապա չուեաց ժողովուրդն յասերովթայ. և բանակեցաւ յանապատին փառանու: 2 *Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ: 3 *Առաքեա՛ արս՝ և լրտեսեսցեն զերկիրն քանանացւոց. զոր ես տաց որդւոցն իէլի 'ի կալուածս: այր մի ցեղէ՝ ըստ տանց նահապետաց իւրեանց առաքեսցես զնս՝ զամ գլխաւորս 'ի նոցանէ: 4 *Եւ առաքեաց զնս մովսէս յանապատէն փառանու ըստ բանին Տն. ամենեքին արք գլխաւորք էին նոքա յորդւոցն իէլի: և այս են անուանք նց: 5 *Ցեղէն ռուբենի, սաղամիէլ որդի ազուրայ: 6 *Ցեղէն շմաւօնի. սափատ որդի սուրեայ: 7 *Ցեղէն յուդայ քաղեբ որդի յեփոնեայ: 8 *Ցեղէն իսաքարայ՝ գաղամ որդի յովսեփայ: 9 *Ցեղէն եփրեմայ՝ օսէս որդի նաւեայ: 10 *Ցեղէն բենիամինի. փաղտի որդի ռափուայ: 11 *Ցեղէն զաբուղօնի. յուդիէլ՝ որդի սուդիայ: 12 *Ցեղէն յովսեփայ՝ որդւոյն մանասէի. գադդէ որդի սուսայ: 13 *Ցեղէն դանայ. ամիէլ որդի գամալի: 14 *Ցեղէն ասերայ. սաթուր որդի միքայէլի: 15 *Ցեղէն նեփթաղիմայ. աբի որդի յաբիայ: 16 *Ցեղէն գադայ՝ գուդիէլ որդի մաքքեայ: 17 *Այսոքիկ անուանք են արանցն՝ զորս առաքեաց Տր լրտեսել զերկիրն քանանացւոց. և անուանեաց մովսէս զանուն օսեայ որդւոյ նաւեայ՝ յեսու: 18 *Եւ առաքեաց զնոսա մովսէս յանապատէն փառանու լրտեսել զերկիրն քանանացւոց: և ասէ ցնս. ելէ՛ք ընդ անապատ. և ամբարձարուք 'ի լեառնն: 19 *Եւ տեսջիք զերկիրն՝ զինչ իցէ: և զժողովուրդն՝ որ նստի 'ի նմա. եթէ զօրաւորագոյն իցէ՝ թէ անաւագ. եթէ սակաւք իցեն՝ եթէ բազումք: 20 *Եւ զինչ իցէ երկիրն՝ յորում նոքա բնակեալք իցեն. եթէ բարի՞ իցէ եթէ չար: և զինչ իցեն քաղաքքն յորս նոքա բնակեալք են. պարսպաւորք են եթէ անպարիսպք ‖ 21 *Եւ զինչ իցէ երկիրն. պարարտ իցէ եթէ տկար: եթէ իցէ՞ 'ի նմա ծառատունկ եթէ ոչ: և ժրաջիք՝ առջիք 'ի պտղոյ երկրին: և աւուրք գարնանայնոյ էին աւուրքն խայծուածոյ խաղողոյ: 22 *Եւ ելեալ լրտեսեցին զերկիրն յանապատէն սինայ մինչև ցռոոբ 'ի մուտս եփրաթայ: 23 *Ելին ընդ անապատն՝ և եկին մինչև ցքեբրոն: և անդ աքիմանն. և սեսի. և թաղամի. և ազգքն ենակայ: և քեբրոն եօթն ամաւ յառաջագոյն շինեալ էր քան զտանիս եգիպտացւոց: 24 *‖Եւ եկին մինչև ցձորն ողկուզոյ. և լրտեսեցին զնա. և հատին անտի ուռ որթոյ՝ և ողկոյզ մի խաղողոյ 'ի նմա. և բարձին զնա լծակօք՝ և 'ի նռանէ՝ և 'ի թզոյ: 25 *Եւ անուանեցին զանուն տեղւոյն՝ ձոր ողկուզոյ. վասն ողկուզին, զոր հատին անտի որդիքն իսրայէլի: 26 *Եւ դարձան անդրէն որդիքն իսրայէլի լրտեսեալ զերկիրն յետ աւուրց քառասնից: 27 *Եւ հասեալ եկին առ մովսէս և առ ահարոն. և առ ամենայն ժողովուրդ որդւոցն իէլի յանապատն փառան կադէս. և ետուն նոցա զբոյց և ամ ժողովրդեանն: և ցուցին զպտուղ երկրին: 28 *Եւ պատմեցին նմ: և ասեն ցնա. չոգաք յերկիրն՝ յոր առաքեցեր զմեզ. երկիր՝ որ բղխէ զկաթն՝ և զմեղր. և այս է պտուղ նորա: 29 *Բայց ազգն սաստիկ էր՝ որք բնակեալն էին 'ի նմա. և քաղաքք ամուրք՝ և պարսպաւորք՝ և մեծամեծք յոյժ: և զազգն

ենակայ

‖Օրէ. 1.24.

ձնակայ տեսաք անդ։ 30 *Եւ ամաղէկ բնակեալ էր յերկրին ընդ հարաւակողմն. և քետացին և խևացին և յեբուսացին և ամորհացին բնակեալ են առ լերամբքն. և քանանացին առ ծովեզերբն և առ յորդանանաւ։

31 *Լռեցոյց քաղէբ զժողովուրդն ի մովսիսէ. և ասէ ցնոսա. ոչ այդպէս է. այլ ելանելով ելցուք և ժառանգեսցուք զնա. զի կարող եմք յաղթել նմա։

32 *Եւ արքն որք ընդ նմա երթեալ էին ասէին ոչ ելցուք. քանզի ոչ կարեմք երթալ ի վերայ ազգին. զի զօրագոյն քան զմեզ է յոյժ։ 33 *Եւ զարհուրեցուցին երկրաւն զոր լրտեսեցին զորդիսն իսրլի և ասեն։ Է երկիրն ընդ որ մեք անցաք լրտեսել զնա երկիր մարդածախէ բնակչաց իւրոց. և զամ ազգն զոր տեսաք ի նմա արք յաղթահասակք են։ 34 *Տեսաք անդ և սկայս. և էաք յաչս նոցա իբրև մարախ։

## ԳԼ. ԺԴ.

1 Եւ ձայն բարձին ամ ժողովուրդն. և ելաց ազգն զգիշերն զայն ողջոյն։ 2 *Եւ տրտնջեաց ժողովուրդն զմովսիսէ և զահարոնէ ամ որդւոցն իսրայէլի. և ասէ ցնոսա ամ ժողովուրդն. լաւ էր եթէ մեռեալ էաք յերկրին եգիպտացւոց. կամ թէ աստէն յանապատի աստ իսկ մեռանէաք։ 3 *Եւ ընդէր տանիցի զմեզ Տր յերկիրն յայն անկանել մեզ պատերազմաւ. և կանայք մեր և որդիք մեր լինիցին ի յափշտակութիւն. և արդ լաւ իցէ մեզ դառնալ անդրէն յեգիպտոս։ 4 *Եւ ասէ այր ցընկեր. արասցուք զօրավար և դարձցուք յեգիպտոս։

5 *Եւ անկան մովսէս և ահարոն ի վր երեսաց իւրեանց առաջի ամենայն որդւոցն իսրայէլի։ 6 *‖ Բայց յեսու որդի նաւեայ. և քաղէբ որդի յեփոնեայ ի լրտեսաց երկրին պատառեցին ըզհանդերձս իւրեանց։ 7 *Եւ խօսեցան ընդ ամ ժողովրդեան որդւոցն իսրլի և ասեն. երկիրն զոր մեք լրտեսեցաք երկիր բարի է յոյժ։ 8 *Եթէ հաճեսցի միայն ընդ մեզ Ած և տարցի յերկիրն յայն. և տացէ զնա մեզ. երկիր է որ բղխէ զկաթն և զմեղր։ 9 *Բայց ի Տէ միայն ապստամբք մի լինիցիք. և ի ժողովրդենէ երկրին մի երկնչիջիք. քանզի կերակուրք մեր են. զի մեկնեցաւ ի նոցանէ Տր, և ընդ մեզ է Տր. մի զանգիտիցէք ի նոցանէ։ 10 *Եւ ասաց ամ ժողովուրդն քարկոծել զնս քարամբք. և փառքն Տն երևեցան ամպով ի վերայ խորանին վկայութեն յանդիման ամ որդւոցն իսրայէլի։

‖ Սիրաք. 46.9. 1. Մակ. 2.55. և 56.

11 *Եւ ասէ Տր ցմովսէս՝ մինչև յերբ բարկացուցանէ զիս ժողովուրդդ. և մինչև յերբ ոչ հաւատան ինձ ամենայն նշանիւքն՝ զորս արարի ի միջի նոցա։ 12 *Թոյլ տուր ինձ և հարից զդոսա մահուամբ. և կորուսից զդոսա. և զքեզ և զտուն հօր քո արարից յազգ մեծ և բազում քան զայդ։ 13 *Եւ ասէ մովսէս ցՏէր, իսկարդ լուիցեն եգիպտացիքն՝ եթէ դու հաներ զօրութեամբ քով մեծաւ զժողովուրդս զայս ի նոցանէ։ 14 *Այլև ամ բնակիչք երկրիս այսորիկ լուիցեն՝ թէ դու Տր ի ժողովրդեանս յայսմիկ ես՝ որոց դէմյանդիման երևիս դու Տր. ‖ և ամպ քո կայ ի վերայ դոցա. սեամբ ամպոյ երթաս դու առաջի դոցա ի տուէ. և սեամբ հրոյ ի գիշերի։ 15 *Եւ սատակիցես զժողովուրդս քո զայս՝ իբրև զայր մի. և խօսիցին ազգքն՝ որք լուան զանուանէ քումմէ և ասիցեն. 16 *Մնզի ոչ կարէր տանել Տէր զժողովուրդն զայն՝ յերկիրն զոր երդուաւ նց. ‖ էարկ զնոսա տապաստ յանապատի։

‖ Ելից. 13.21.

‖ Ելից. 32.28.

17 *Եւ արդ բարձրասցի ձեռն քո Տէր. որպէս խօսեցար՝ և ասացեր։ 18 *Թէ ‖ Տր երկայնամիտ է. և բազումողորմ և ճշմարիտ. ‖ բառնայ զանօրէնութիւն. և զանիրաւութիւն՝ և զմեղս. և սրբելով ոչ սրբէ զպարտաւորն. ‖ հատուցանէ զմեղս հարանց յորդիս մինչև յերիս և ի չորս ազգս։ 19 *Թող զմեղս ժողովրդեանս քո, ըստ մեծի ողորմութեն քում. որպէս ներեցեր դոցա յեգիպտոսէ մինչև ցայժմ։ 20 Եւ ասէ Տր ցմովսէս. ներեցից դոցա ըստ բանի քում։ 21 *Բայց կենդանի եմ ես. և կենդանի է անուն իմ. և լցցեն փառք Տն զամ երկիր։ 22 *Զի ամ արք՝ որք տեսին զփառսն իմ, և զնշանս՝ զորս արարի ես յեգիպտոս և յանապատիս յայսմիկ. և փորձեցին զիս այս տասն անգամ. և ոչ լուան ձայնի իմում։ 23 *‖ Թէ տեսանիցեն զերկիրն՝ զոր երդուայ հարցն նոցա. այլ որդիք նոցա՝ որք են աստ ընդ իս՝ որք ոչ գիտեն զչար՝ կամ զբարի. ամենայն մանուկ տխմար՝ նց տաց զերկիրն՝ և ամենեքին՝ որք բարկացուցին զիս՝ ոչ տեսցեն զնա։ 24 *‖ Բայց քաղէբ ծառայ իմ ‖ յորում եղև հոգի այլ. և եկն զհետ իմ. տարայց զնա յերկիրն՝ յոր եմուտ. և զաւակ նորա ժառանգեսցէ զնա։ 25 *Եւ ամաղէկ՝ և քանանացին բնակեալ են ի ձորն՝ բայց դուք ի վաղիւ դարձարուք՝ և չուեցէք յանապատն ընդ ճանապարհ կարմիր ծովուն։

‖ Սաղ. 102.8.

‖ Ելից 34.7.

‖ Ելից 20.5.

‖ 2. Օրէ 1. 35.

‖ Յեսուա 14.6.

*Խօ-

26 *Խօսեցաւ Տր̃ ընդ Մովսէսի՝ և ընդ Ահարօնի՝ և ասէ։ 27 *Մինչև յե՞րբ զժողովուրդդ զայդ զչար կրիցեմ. և զոքա տրտնջեն առաջի իմ. զտրտունջ որդւոցն Իս̃ղի որք տրտնջեն զձէնջ, լուայ։ 28 *Արդ ասասցես ցնոսա. կենդանի եմ ես՝ ասէ Տէր՝ եթէ ոչ ո՞րպէս խօսեցայք յականջս իմ, նոյնպէս արարից ձեզ։ 29 *‖Յանապատիս յայսմիկ անկցին ոսկերք ձեր. և ա̃մ հանդէս ձեր. և մնացեալքն 'ի ձէնջ 'ի համար՝ 'ի քսանե ամենից և 'ի վեր՝ որք տրտնջեցին զինէն։ 30 *‖Թէ մտանիցեն յերկիրն՝ յոր համբարձի զձեռն իմ բնակեցուցանել զձեզ 'ի նմա. բայց քաղեբ որդի յեփոնեայ. և յեսու նաւեան։ 31 *Եւ զորդիսն զորմէ ասացիք՝ թէ 'ի յափշտակութի լինիցին՝ տարայց զնոսա յերկիրն. և ժառանգեսցեն զնա. յորմէ դուքն յափրացայք։ 32 *Եւ ոսկերք ձեր անկցին աստէն յանապատիս։ 33 *Եւ որդիք ձեր ճարակեսցին յանապատի աստ ամս քառասուն. և բարձցեն զպոռնկութի ձեր՝ մինչև մաշեսցին ոսկերք ձեր յանապատի աստ։ 34 *Ըստ թուոյ աւուրցն քառասնից. ‖ օր ընդ տարւոյ ընդունիցիք զմեղս ձեր ‖ զքառասուն ամ. և ծանիջիք զսրտմտութի բարկութե իմոյ։ 35 *Ես Տր̃ խօսեցայ. եթէ ոչ արարից ժողովրդեանդ այդմիկ չարի յարուցելոյ 'ի վր̃ իմ. յանապատի աստ ծախիցին. և աստէն մեռանիցին։ 36 *‖Եւ արքն՝ զորս առաքեաց Մովսէս լրտեսել զերկիրն, և եկեալ բամբասեցին զնը մանէ առ ժողովրդեանն. հանել համբաւ չար զերկրէն։ 37 *Եւ ‖ մեռան արքն այնոքիկ՝ որք հանին համբաւ չար զերկրէն, չարաչար հարուածովք առաջի Տն̃։ 38 *Եւ յեսու որդի նաւեայ՝ և քաղեբ որդի յեփոնեայ միայն ապրեցան յարանցն յայնցանէ՝ որք երթեալ էին լրտեսել զերկիրն։ 39 *Եւ խօսեցաւ Մովսէս զպատգամս զայսոսիկ առ ա̃մ որդիսն իսրայէլի. և սուգ էառ ժողովուրդն յոյժ։ 40 *Եւ կանխեալ ընդ առաւօտն՝ ելին 'ի գլուխ լերինն. և ասեն՝ ահաւասիկ կամք մեք՝ ելցուք 'ի տեղին՝ զոր ասաց Տէր՝ զի մեղաք։ 41 *Եւ ասէ Մովսէս. ընդէ՞ր անցէք զբանիւ Տն̃ և ոչ յաջողեսցի ձեզ։ 42 *‖Մի՛ ելանէք՝ զի ոչ է Տր̃ ընդ ձեզ. և անկանիցիք առաջի թշնամեաց ձերոց։ 43 *Զի ամաղէկ՝ և քանանացին են անդ առաջի ձեր՝ և անկանիցիք սրով. փոխանակ զի դարձայք յետս՝ և հեստեցիք Տն̃. և ոչ լինիցի Տր̃ ընդ ձեզ։ 44 *Եւ անսաստեալ ելին 'ի գլուխ լերինն. բայց տապանակ կտակարանացն Տն̃ և Մովսէս ո՛չ շարժեցան 'ի բանակէ անտի։ 45 *Եւ իջ ամաղէկ՝ և քանանացին՝ որ բնակեալ էր 'ի լերինն. և հարին զնս. և կոտորեցին զնս մինչև ցհերմայ։ 46 *Եւ դարձան անդրէն 'ի բանակն։

‖Սայր. 26. 65. ‖32. 10. Սաղմ. 105. 26. ‖2. Օրէ 1. 35. ‖Եզեկ. 4. 6. ‖Սաղմ. 94. 10. ‖1. Կորն. 10. 10. ‖Եբրայ. 3. 17. Յուդ. 1. 5. ‖2. Օրէ 1. 42.

## ԳԼ: ԺԵ:

1 Խօսեցաւ Տէր ը̃ Մովսէսի՝ և ասէ։ 2 *Խօսեա՛ց ը̃ որդիսդ իսրայէլի՝ և ասասցես ցդոսա. յորժամ մտանիցէք յերկիրն բնակութե ձերոյ՝ զոր ես տաց ձեզ։ 3 *Եւ առնիցէք ողջակէզ Տն̃ և ողջ ընծայ 'ի զոհ՝ մեծացուցանել զուխտս կամ զկամաւոն՝ կամ 'ի տօնս ձեր առնել հոտ անուշից Տն̃, եթէ յարջառոյ և եթէ 'ի հօտից։ 4 *Եւ բերցէ՝ որ մատուցանիցէ զպատարագն իւր Տն̃, զոհ նաշհոյ՝ զտասանորդ գրուէին՝ զանգեալ իւղով՝ չորրորդաւ դորակին։ 5 *Եւ գինի 'ի նուէր զչորրորդ դորակին։ առնիցէք ըստ զոհին՝ կամ ըստ ողջակիզին. առ գառն մի. այնչափ առնիցես ընծայ 'ի հոտ անուշից Տն̃։ 6 *Եւ խոյին՝ յորժամ առնիցես զնա յողջակէզ, կամ 'ի զոհ. արասցես զզոհ նաշհոյն, երկուս տասանորդս զանգեալ իւղով երկրորդիւ դորակին։ 7 *Եւ գինի 'ի նուէր զերկրորդ դորակին մատուցանիցէք 'ի հոտ անուշից Տն̃։ 8 *Եթէ յարջառոց առնիցէք յողջակէզ՝ կամ 'ի զոհ. մեծացուցանել զուխտս 'ի փրկութի Տն̃։ 9 *Մատուսցէ ըստ զուարակին՝ զոհ նաշհոյ՝ երիս տասանորդս զանգեալ իւղով կիսով դորակին։ 10 *Եւ գինի 'ի նուէր կէս դորակին՝ ընծայ 'ի հոտ անուշից Տն̃։ 11 *Նոյնպէս առնիցես։ 12 *Միում զուարակին. կամ միում խոյին. կամ միում գառինն. յօդեաց կամ՝ յայծեաց։ ըստ թուոյ նց̃ որպէս զինչ առնիցէք՝ նոյնպէս արասջիք միում ըստ իւրաքանչիւր թուոյ նոցա։ 13 *Ամենայն բնակն նոյնպէս արասցէ. նոյնպիսի ընծայս մատուցանել 'ի հոտ անուշից Տն̃։ և եթէ եկ ոք յարեսցի 'ի ձեզ յերկրին ձերում, որ լինիցի առ ձեզ յազգս ձեր՝ արասցէ ընծայ 'ի հոտ անուշից Տն̃։ 14 *Որպ̃ դուքն առնիցէք. նոյնպէս առնիցէ և եկն. և ժողովուրդն Տն̃։ 15 *Օրէն մի և նոյն կացցէ ձեր և եկաց՝ որք յարիցին 'ի ձեզ. օրէն յաւիտենական յազգս ձեր. որպ̃ և դուքն իցէք. և եկն լինիցի առաջի Տն̃. օրէն մի և նոյն կացցէ. և իրաւունք մի և նոյն լինիցին՝ ձեր և եկին՝ 16 որ յեցեալ իցէ 'ի ձեզ։ *Խօսեցաւ Տր̃ 17 ընդ Մովսէսի՝ և ասէ։ *Խօսեա՛ց ընդ որ-

որդիսդ Իլի, եւ ասասցես ցդոսա ։
18 *'Ի մտանել ձեր յերկիրն յոր ես տա_
րայց զձեզ ։ 19 * Եւ եղիցի յորժամ ու_
տիցէք դուք 'ի հացէ երկրին, առջիք
հաս 'ի նուէր Տն զառաջին զանդուա
ծոյ ձերոյ ։ 20 * Եւ տարջիք զհաց հա_
սին Տն ։ զատուցջիք զայն Տն որպէս
զհասն 'ի կալոյ ։ 21 * Նոյնպէս եւ զայն զա
տուցանիցէք ։ զառաջին զանդուածոյն
ձերոյ ։ եւ տաջիք Տն հաս յազգս ձեր ։
22 *Իսկ յորժամ յանցանիցէք՝ եւ ոչ առ
նիցէք զամ՝ զպատուիրանս զայսոսիկ՝
զորս խօսեցաւ Տր ընդ մովսէսի ։ 23 *Որ
հրամանն ետ ձեզ Տր 'ի ձեռն մովսէսի՝
յօրէ յորմէ հրաման ետ ձեզ Տէր եւ
առ յապայ ժամանակս յազգս ձեր ։
24 * Եւ եղիցի եթէ յաչաց ժողովր_
դեանն վրիպիցի ակամայ ինչ, արաս_
ցէ ժողովուրդն զուարակ մի յանդոյ
անարատ յողջակէզ 'ի հոտ անուշից
Տն ։ եւ զոհ ըստ նմին՝ եւ նուէր ըստ նմին
պայմանի ։ եւ նոխազ մի յայծեաց վն
մեղաց ։ 25 * Եւ քաւեսցէ քահանայն վն
ամ ժողովրդեան որդւոցն իսրայելի ։
եւ թողցի նց՝ զի ակամայ է ։ եւ նոքա
մատուցեն զպատարագն իւրեանց
ընծայ Տն ։ վն մեղաց իւրեանց առա
ջի Տն ։ յաղագս ակամայիցն իւրեանց ։
26 *Եւ թողցի ամ ժողովրդեան որդ_
ւոցն Իլի ։ եւ եկին յեցելոյ 'ի ձեզ ։ զի
ամենայն ժողովրդեանն է ակամայն ։
27 *Եւ եթէ մի անձն մեղիցէ ակամայ,
մատուսցէ այծ մի տարեւոր վասն մե
ղաց ։ 28 * Եւ քաւեսցէ քահանայն 'ի վն
անձին ակամայեցելոյ՝ եւ մեղուցելոյ
առաջի Տն ակամայ ։ քաւել վասն նր ։
29 *Բնակին որդւոցն իսրայելի, եւ եկին
յեցելոյ 'ի նոսա, օրէն մի եւ նոյն կաց_
ցէ ։ որ ինչ առնիցէ ըք ակամայ ։ 30 * Եւ
անձն՝ որ առնիցէ ձեռամբ հպարտու
թն 'ի բնակաց կամ յեկաց՝ բարկա_
ցոյց նա զԱծ ։ սատակեսցի անձն այն
'ի ժողովրդենէ իւրմէ ։ 31 * Զի զբանն
Տն խոտեաց ։ եւ զպատուիրանս նորա
ցրեաց ։ Ջնջելով ջնջեսցի անձն այն
'ի ժողովրդենէն իւրմէ՝ զի մեղք նր
'ի նմա են ։ 32 * Եւ էին որդիքն իսրայէլի
'ի յանապատի անդ ։ եւ գտին զայր մի
որ քաղէր փայտ յաւուր շաբաթու ։
33 *Եւ մատուցին զնա՝ որք գտինն՝ զի
քաղէր փայտ յաւուր շաբաթու՝ առ
մովսէս եւ առ ահարոն ։ եւ առ ամ ժո_
ղովուրդ որդւոցն Իլի ։ 34 * Եւ եդուն
զնա 'ի պահ ։ զի ոչ ընտրեցին, թէ
զինչ առնիցեն նմա ։ 35 * Եւ խօսեցաւ
Տր ը մովսէսի՝ եւ ասէ ։ մահու մեռցի
այրն ։ քարամբք քարկոծեսցեն զնա
ամենայն ժողովուրդն ։ 36 * Եւ հանին
զնա ամ ժողովուրդն արտաքոյ բա_
նակին ։ եւ քարկոծեցին զնա ամ ժո_
ղովուրդն արտաքոյ բանակին՝ որպէս
հրամայեաց Տր մովսէսի ։ 37 * Խօսեցաւ
Տէր ընդ մովսէսի՝ եւ ասէ ։ 38 * Խօսեաց
ընդ որդիսն Իլի ։ եւ ասասցես ցնոսա ։
‖զի արասցեն իւրեանց ծոպս 'ի տոտունս
հանդերձից իւրեանց յազգս իւրեանց ։
եւ դնիցէք 'ի վերայ ծոպից տոտնոցն՝
առղանի կապուտակ ։ 39 * Եւ լինիցի այն
ձեզ 'ի ծոպս՝ եւ տեսանիցէք զայն՝ եւ
յիշիցէք զամենայն զպատուիրանս
Տն առնել զնս ։ եւ ոչ խոտորիցիք զկնի
մտաց եւ աչաց ձերոց՝ որով դուքն
պոռնկիք զկնի նոցա ։ 40 * Զի յիշիցէք՝
եւ առնիցէք զամ զպատուիրանս իմ ։
եւ եղիջիք սուրբք Այ ձերում ։
41 * Զի ես եմ Տէր Աժ ձեր՝ որ հանի
զձեզ յերկրէն եգիպտացւոց լինել
ձեր Աժ ։ ես եմ Տր Աժ ձեր ։

‖ 2. Օրէ. 22. 12. Մատ. 23. 5.

## ԳԼ: ԺԶ:

1 Եւ խօսեցաւ կորխ՝ որդի սահա_
ռայ որդւոյ կահաթու որդւոյ
ղեւեայ ։ եւ դաթան՝ եւ աբիրոն որդիք
եղիաբայ որդւոյ ռուբենի՝ եւ օնան
որդի փաղեթայ որդւոյ ռուբենի ։
2 * Եւ կացին հակառակ մովսէսի ։ եւ եր
կերիւր եւ յիսուն այր յորդւոցն Իլի
գլխաւորք ժողովրդեանն՝ խորհրդա
կանք խորհրդոց՝ եւ արք անուանիք ։
3 *‖Յուտեցան 'ի վն մովսէսի եւ ահարո
նի՝ եւ ասեն ։ Շատ լիցի ձեզ ։ զի ամ
ժողովուրդն՝ եւ ամենեքեան սուրբք
են ։ եւ Տր 'ի միջի նց ։ եւ արդ ընդէր
ձոխացեալ էք 'ի վն ժողովրդեանդ
Տն ։ 4 * Եւ լուեալ մովսէսի անկաւ 'ի վն
երեսաց իւրոց ։ 5 * Եւ խօսեցաւ ընդ
կորխայ եւ ընդ ամենայն ժողովրդեան
նորա՝ եւ ասէ ։ յայց եղ՝ եւ ծանեաւ Աժ
զիւրսն ։ եւ զսուրբս ։ եւ մերձեցոյց առ
ինքն ։ եւ զորս ոչն ընտրեաց՝ ոչ մերձե
ցոյց առ ինքն ։ 6 * Այդ՝ զայս արարէք ։
առէք ձեզ զբուրվառս ձեր ։ կորխ եւ
ամ ժողովուրդ իւր ։ 7 * Եւ դիք 'ի
նա հուր ։ եւ արկէք 'ի նա խունկ առա_
ջի Տն 'ի վաղիւ ։ եւ եղիցի այր՝ զոր
ընտրեսցէ Տր՝ նա է սուրբ ։ շատ լիցի
ձեզ որդիք ղեւեայ ։ 8 * Եւ ասէ մովսէս
ցկորխ ։ լուարուք ինձ որդիք ղեւեայ ։
9 * Միթէ փոքր ինչ իցէ ձեզ այդ ։ զի
զատոյց զձեզ Աժ իսրայէլի 'ի ժողովր
դենէ իւրմէ ։ եւ մերձեցոյց զձեզ առ
ինքն պաշտել զպաշտօն խորանին Տն ։
եւ կալ առաջի ժողովրդեանն ։ պաշ
տել զնա ։ 10 * Եւ մերձեցոյց զքեզ առ
ինքն ։ եւ զամ եղբարս քո զորդիսն
ղեւեայ ընդ քեզ ։ եւ քահանայանալ եւս
խնդ_

‖ Ա. 26. 9. Սիրաք 45. 22. 1. Կոր. 10. 10. Յուդ. 1. 11.

11 խնդրէք ։ *Եւ այդպէս դու և ժողովուրդ քո դումարեալ էք զՏն. և ահարոն ո՞վ է՝ զի տրտնջէք զնմանէ ։ 12 *Եւ առաքեաց մովսէս կոչել զդաթան և զաբիրոն զորդիսն եղիաբու. և ասեն՝ ոչ եկեսցուք ։ 13 *Միթէ փոքր իցէ այն՝ զի հաներ զմեզ յերկրէն՝ որ բղխէր զկաթն և զմեղր. սպանանել զմեզ յանապատի աստ. և արդ սաստես ևս մեզ. և դու ես իշխան ։ 14 *Միթէ յերկիրն՝ որ բղխէր զկաթն և զմեղր՝ տարար զմեզ. և ետուր մեզ անդ ժառանգութիւն անդաց և այգեաց. եթէ զաչս մեր բրեցես՝ ոչ եկեսցուք առ քեզ ։ 15 *Եւ ծանրացաւ ամն եղև յոյժ. և ասէ ցՏր՝ մի հայիր 'ի զոհսն նոցա. զի զցանկալի ինչ ուրուք 'ի նոցանէ ես ոչ առի՝ և ոչ զոք 'ի նոցանէ չարչարեցի ։ 16 *Եւ ասէ մովսէս ցկորխ. սրբեա զժողովուրդ քո. և եղիջիք պատրաստք առաջի Տն՝ դու և ահարոն՝ առ վաղիւ ։ 17 *Եւ առէք իւրաքանչիւր զբուրվառ իւր. և դիջիք 'ի վերայ նոցա խունկս. և մատուսջիք առաջի Տն իւրաքանչիւր զբուրվառ իւր. զերկերիւր և զյիսուն բուրվառսն. և դու և ահարոն զիւրաքանչիւր բուրվառ իւր ։ 18 *Եւ եդին 'ի նա հուր. և արկին 'ի նա խունկ՝ և կացին առ դրան խորանին վկայութե մովսէս և ահարոն ։ 19 *Եւ կուտեաց 'ի վերայ նց կորխ զամ ժողովուրդն իւր 'ի դուռն խորանին վկայութե. և երևեցան փառք Տն ամ ժողովրդեանն ։ 20 *Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի և ընդ ահարոնի՝ և ասէ ։ 21 *Մեկնեցարուք 'ի միջոյ ժողովրդեանդ այդորիկ. և սատակեցից զդոսա միանգամայն ։ 22 *Անկան 'ի վերայ երեսաց իւրեանց՝ և ասեն. Ած. Ած հոգւոց և ամենայն մարմնոյ. եթէ մի մարդ մեղաւ, 'ի վերայ ամ ժողովրդեանդ դայցէ բարկութի Տն ։ 23 *Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ ։ 24 *Խօսեաց ընդ ժողովրդեանն՝ և ասասցես. զատարուք շուրջ զժողովրդեամբդ կորխայ. և դաթանայ՝ և աբիրոնի ։ 25 *Եւ յարեաւ մովսէս՝ և գնաց առ դաթան՝ և աբիրոն՝ և գնացին ը̃ նմա ամ ծերքն իՂի ։ 26 *Եւ խօսեցաւ ընդ ժողովրդեանն՝ և ասէ. մեկնեցարուք 'ի վրանաց արանց խստացդ այդոցիկ. և մի մերձենայցէք յինչ դոցա. զի մի կորնչիցիք ընդ ամ մեղս դոցա ։ 27 *Եւ մեկնեցան 'ի ժողովրդենէ կորխայ շուրջ զնոքօք. և դաթան՝ և աբիրոն ելին՝ և կային առ դրան վրանաց իւրեանց. և կանայք նոցա և մանկունք իւրեանց՝ և աղխն իւրեանց ։



28 *Եւ ասէ մովսէս, այսու գիտասջիք. եթէ Տր առաքեաց զիս գործել զամենայն գործս զայսոսիկ. և եթէ ոչ յինէն ինչ է ։ 29 *Եթէ ըստ մահու ամ մարդկան մեռանիցին դոքա. կամ ըստ հանդիսի ամ մարդկան լինիցի հանդէս դոցա. ապա զիս Տր ոչ առաքեաց ։ 30 *Այլ եթէ նորանշան ինչ ցուցցէ Տր՝ և բացեալ երկրի զբերան իւր կլանիցէ զդոսա. և զտունս դոցա՝ և զամ ինչ որ դոցա իցէ՝ և իջանիցեն կենդանւոյն 'ի դժոխս. գիտասջիք՝ եթէ բարկացուցին արքդ այդոքիկ զՏր ։ 31 *‖Եւ իբրև դադարեաց 'ի խօսելոյ զբանս զայսոսիկ՝ պատառեցաւ երկիր 'ի ներքոյ նոցա ։ 32 *Եւ բացաւ երկիր՝ և եկուլ զնս՝ և զտունս նոցա. և զմարդիկն՝ որք էին ընդ կորխայ՝ և զանասունս նոցա ։

‖2. Օրէ 11.6. Սաղմ. 105.17. և 18.



33 *Եւ իջին նոքա՝ և որ ինչ էր նոցա կենդանւոյն 'ի դժոխս. և ծածկեաց զնոսա երկիրն. և կորեան 'ի միջոյ ժողովրդեանն ։ 34 *Եւ ամ իէլ՝ որ շուրջ զնոքօք էր՝ փախեան 'ի ձայնէ նց. զի համարէին թէ դուցէ կլանիցէ զնոսա երկիրն ։ 35 *Եւ ել հուր 'ի Տէ՝ և եկեր զերկերիւր և զյիսուն արսն՝ որք մատուցանէին զխունկսն ։ 36 *Եւ ասէ Տր ցմովսէս և ցեղիազար ցորդին ահարոնի քահանայի ։ 37 *Բարձէք զբուրվառս պղնձիս 'ի միջոյ այրեցելոցդ՝ և զհուրդ օտար ցրուեսցես 'ի բաց. զի

սրբեցան։ 38 * Զբուրվառսդ մեղաւորացդ այդոցիկ յոգիս իւրեանց. եւ արասցես զայդ դրուագս կռածոյս նուիրատանս սեղանոյն. զի մատուցան առաջի Տն̃ եւ սրբեցան. եւ եղիցին 'ի նշանակ որդւոցն Իէլի։ 39 * Եւ էառ Եղիազար որդի ահարոնի քահանայի զբուրվառսն պղնձիս՝ զորս մատուցին այրեցեալքն. եւ արար դրուագս սեղանոյն։ 40 * Յիշատակ որդւոցն Իէլի. զի մի՛ մերձենայցէ այլազգի ոք՝ որ չիցէ 'ի զաւակէ ահարոնի դնել խունկս առաջի Տն̃. զի մի՛ լինիցի իբրեւ զկորխ եւ զխուժան նորա. որպէս խօսեցաւ Տր̃ 'ի ձեռն մովսէսի։ 41 * Եւ տրտնջեցին որդիքն իսրայէլի 'ի վաղիւն անդր զմ̃ս սէս եւ զահարոնէ, եւ ասեն. դուք կոտորեցիք զժողովուրդն Տն̃։ 42 * Եւ եղեւ 'ի կուտիլ ժողովրդեանն 'ի վր̃ մովսէսի եւ ահարոնի. դիմեցին 'ի խորանն վկայութե̃. եւ զնոսա ծածկեաց ամպն. եւ երեւեցան փառքն Տն̃։ 43 * Եւ կացին մովսէս եւ ահարոն յանդիման խորանին վկայութե̃։ 44 * Եւ խօսեցաւ Տր̃ ընդ մովսէսի եւ ընդ ահարոնի՝ եւ ասէ։ 45 * Մեկնեցարուք 'ի միջոյ ժողովրդեանդ այդորիկ՝ եւ սատակեցից զդոսա միանգամայն. եւ անկան 'ի վր̃ երեսաց իւրեանց։ 46 * Եւ ասէ մովսէս ցահարոն. առ դու զբուրվառն. եւ դի՛ր 'ի նմա հուր 'ի սեղանոյ անտի. եւ արկ 'ի նա խունկ. եւ տա՛ր վաղվաղակի 'ի բանակն. եւ քաւեսցես վասն նց̃. ‖ քանզի ել բարկութի̃ 'ի Տէ̃, եւ սկսաւ սատակել զժողովուրդն։ 47 * Եւ էառ ահարոն որպէս խօսեցաւ ընդ նմա մովսէս. եւ ընթացաւ 'ի ժողովուրդ անդր՝ եւ ահա սկսեալ էր սատակումն 'ի ժողովրդեանն. եւ էարկ զխունկն. եւ քաւեաց վասն ժողովրդեանն։ 48 * Եւ եկաց 'ի մէջ մեռելոց եւ կենդանեաց. եւ դադարեաց սատակումն։ 49 * Եւ եղեն մեռեալք 'ի սատակմանն չորեքտասան հազար եւ եօթն հարիւր. թո՛ղ զմեռեալսն վասն կորխայ։ 50 * Եւ դարձաւ ահարոն առ մովսէս 'ի դուռն խորանին վկայութեան. եւ դադարեաց սատակումն։

‖ Իմաս. 18.21.

## Գլ. ԺԷ.

1 Եւ խօսեցաւ Տր̃ ընդ մովսէսի՝ եւ ասէ։ 2 * Խօսեաց դու ընդ որդիսդ իսրայէլի, եւ առցես 'ի նոցանէ գաւազանս ըստ տանց նահապետաց իւրեանց. ամ̃ իշխանաց իւրեանց. ե̃բ տանց ազգաց իւրեանց. երկոտասան գաւազանս. եւ զիւրաքանչիւր անուն գրեսցես 'ի վերայ գաւազանի իւրոյ։ 3 * Եւ զանունն ահարոնի գրեսցես 'ի վր̃ իւրոյ գաւազանի. եւ իցէ գաւազան մի ըստ ցեղից իսրայէլի՝ զոր 'ի տանց նահապետաց իւրեանց տացեն։ 4 * Եւ դիցես զնս̃ 'ի խորանին վկայութե̃ որով երեւեցայց քեզ անդ։ 5 * Եւ եղիցի մարդոյ՝ զոր ընտրեցից՝ գաւազանն ծաղկեսցի. եւ բարձից յինէն զտրտունջ որդւոցն իսրայէլի զոր տրտնջեն նոքա զձէնջ։ 6 * Եւ խօսեցաւ մովսէս ընդ որդիսն իսրայէլի. եւ ետուն ցնա ամ̃ իշխանքն նց̃ զգաւազանս իւրեանց. գաւազան միոյ իշխանի ըստ տանց նահապետաց իւրեանց. երկոտասան գաւազանս. եւ գաւազանն ահարոնի 'ի մէջ գաւազանացն նց̃։ 7 * Եւ եդ մովսէս զգաւազանսն առաջի Տն̃ 'ի խորանին վկայութեան։ 8 * Եւ եղեւ 'ի վաղիւն անդր մտին մովսէս եւ ահարոն 'ի խորանն վկայութե̃. եւ ահա դալարացաւ գաւազանն ահարոնի 'ի տանն ղեւեայ. եւ արձակեաց շառաւիղ. եւ ծաղկեաց զծաղիկ. եւ երեւեցոյց ընկոյզ։ 9 * Եւ եհան մովսէս զգաւազանսն յերեսաց Տն̃ առ ամ̃ որդիսն իսրայէլի. եւ տեսին. եւ էառ իւր աքանչիւրոք զգաւազան իւր։ 10 * Եւ ասէ Տր̃ ցմովսէս. ‖ դի՛ր զգաւազանդ ահարոնի՝ առաջի վկայութե̃ցն 'ի պահեստ. 'ի նշանակ որդւոցն անհնազանդից. եւ դադարեսցի տրտունջիւն դոցա յինէն՝ եւ մի՛ մեռանիցին։ 11 * Եւ արարին մովսէս եւ ահարոն որպէս հրաման ետ Տր̃ մովսէսի՝ նոյնպէս եւ արարին։ 12 * Եւ խօսեցան որդիքն իսրայէլի ընդ մովսէսի՝ եւ ասեն. ահաւասիկ սատակիմք. կորնչիմք. ծախիմք։ 13 * Ամ̃ որ մերձենայ 'ի խորանն վկայութե̃ Տն̃, մեռանի. մինչեւ իսպառ մեռանիցիմք։

‖ Եբր. 9.4.

## Գլ. ԺԸ.

1 Եւ խօսեցաւ Տր̃ ընդ ահարոնի՝ եւ ասէ. դու՝ եւ որդիք քո. եւ տուն նահապետութե̃ քոյ ընդ քեզ առնուցուք զմեղս սրբութե̃ցն։ եւ դու՝ եւ որդիք քո առնուցուք զմեղս քահանայութե̃ ձերոյ։ 2 * Եւ զեղբարս քո զցեղն ղեւեայ զդուռն հօր քոյ մատուսցես առ քեզ. եւ յաւելցին 'ի քեզ։ եւ պաշտեսցեն զքեզ։ եւ դու՝ եւ որդիք քո ը̃ քեզ յանդիման խորանին վկայութե̃։ 3 * Եւ պահեսցեն զպահպանութի̃ս քո եւ զպահպանութի̃ս խորանին վկայութե̃. բայց 'ի սպասն իմ 'ի սր̃՝ եւ 'ի սեղանն մի՛ մերձեսցին՝ զի մի՛ մեռանիցին. եւ նոքա, եւ դուք։ 4 * Եւ յաւելցին 'ի քեզ. եւ պահեսցեն զպահպանութի̃ս խորանին վկայութե̃. ըստ ամ̃ պաշտամանն

‖ Ելից 30.13. Ղեւ. 27.25. ‖ Եզե. 3.47. Եզեկ. 45.12.

մամն խորանին. և օտարազգի մի՛ մերձեսցի առ քեզ: *5 Եւ պահեսջիք զպահպանութիւն սրբութեանն. և զպահպանութիւն սեղանոյն. և ոչ ևս լինիցի բարկութիւն յորդիսն Իսրայէլի: *6 Եւ ես առի զեղբարս ձեր զղևտացիս 'ի միջոյ որդւոցն Իսրայէլի՝ փոխանակս տուեալ Տն. պաշտել զպաշտօն խորանին վկայութեան: *7 Եւ դու՝ և որդիք քո ը̄ քեզ պահեսջիք զքահանայութիւն ձեր՝ ըստ ամենայն պայմանի սեղանոյն և զներքին կողմն վարագուրին. և պաշտեսջիք զպաշտօն քահանայութեան ձերոյ. և այլազգին՝ որ մերձենայցէ՝ մեռցի: *8 Խօսեցաւ Տր ընդ Ահարոնի՝ և ասէ. ես ահաւասիկ ետու ձեզ զպահեստ պտղոց իմոց. յամ նուիրելոցն ինձ յորդւոցն Իսրայէլի՝ քեզ ետու զայն 'ի պատիւ, և որդւոց քոց յետ քո. օրէն յաւիտենական: *9 Եւ այս եղիցի ձեզ 'ի նուիրելոց սրբութեան ընծայից. յամ պատարագաց նոցա. և յամ զոհից նոցա. և յամէ առ 'ի յանցանաց նց. և յամէ առ 'ի մեղաց նց. զոր տայցեն ինձ յամ սրբութեանցն՝ քեզ լիցի և որդւոց քոց: *10 'Ի սրբութիւն սրբութեանցն կերիջիք զայն ամ: ամենայն արու ուտիցէ զայն. դու՝ և որդիք քո. զի սրբութիւք եղիցին քեզ: *11 Եւ այն եղիցի ձեզ 'ի պտղոյ տրոյն նոցա. յամ նուիրաց որդւոցն Իսրայէլի քեզ ետու զայն. և ուստերաց և դստերաց քոց ընդ քեզ. օրէն յաւիտենական: ամ որ 'ի տան քում կերիցէ զայն: *12 Եւ զամ պտուղ իւղոյ. և զամ պտուղ գինւոյ և ցորենոյ՝ զոր տացեն Տն զպտուղ իւրեանց. քեզ ետու զայն ամ: *13 Եւ առաջինք արմտեաց երկրին իւրեանց՝ զոր մատուցեն Տն, քեզ լիցին. և ամ որ 'ի տան քում կերիցէ զայն: *14 Եւ ամ նուիրեալն յորդւոցն Իսրայէլի քեզ լիցի: *15 Եւ ամ որ բանայ զարգանդ ամ մարմնոյ՝ զոր մատուցանիցեն Տն 'ի մարդոյ մինչև յանասուն՝ քեզ լիցի: այլ փրկելով փրկեսցես զանդրանիկս մարդկան: և զանդրանիկս անասնոց անսրբոց փրկեսցես: *16 Եւ փրկանք նորա յամսօրէից և 'ի վեր: և ‖ գին նորա հինգ սիկղ ըստ սրբութեան սկեղն. որ է քսան դանգ: *17 Բայց զանդրանիկս արջառոց, զանդրանիկս ոչխարաց, և զանդրանիկս այծեաց ոչ փրկեսցես՝ զի սուրբ են. և զարիւն նց հեղցես առ սեղանովն. և զճարպն հանցես ընծայ 'ի հոտ անուշից Տն: *18 Եւ միսն եղիցի քո. որպէս երբուծ նուիրին՝ և երին աջոյ քեզ լիցի: *19 Զամ ինչ հաս 'ի սրբութեանցն

‖ Ելից 30. 13. Ղևտ. 27. 25. Թուոց 3. 47. Եզեկ. 45. 12.



զոր հանցեն Տն որդիքն Իսրայէլի՝ քեզ ետու և որդւոց քոց. և ուստերաց և դստերաց քոց ընդ քեզ. օրէն յաւիտենական: քանզի ուխտ աղի է առաջի Տն. քեզ և զաւակի քում՝ յետ քո: *20 Եւ խօսեցաւ Տր ը̄ Ահարոնի՝ և ասէ: յերկրի նոցա մի՛ ժառանգեսցես. և բաժին քո ընդ նոսա մի՛ լիցի. ‖ զի ես եմ՝ բաժին քո և ժառանգութիւն 'ի մէջ որդւոցն Իսրայէլի: *21 Եւ որդւոցն ղևեայ՝ ահա ետու զամ՝ տասանորդս Իսրայէլի 'ի ժառանգութիւն փոխանակ պաշտաման նոցա. զոր նոքայն պաշտիցեն 'ի խորանին վկայութեան: *22 Եւ մի՛ ևս մերձեսցին որդիքն Իսրայէլի 'ի խորանն վկայութեան ընդունել զմեղս մահաբերս: *23 Եւ պաշտեսցէ ղևտացին ինքն զպաշտօն խորանին վկայութեան. և նոքա առցեն զմեղս նց. օրէն յաւիտենական յազգս իւրեանց 'ի մէջ որդւոցն Իսրայէլի: ‖ և մի՛ ժառանգեսցեն զժառանգութիւն: *24 Զտասանորդս որդւոցն Իսրայէլի՝ զոր զատուսցեն Տն հաս, ետու ղևտացւոցն 'ի ժառանգութիւն. վասն այսորիկ ասացի նց թէ 'ի մէջ որդւոցն Իսրայէլի մի՛ ժառանգեսցեն զվիճակ: *25 Խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ և ասէ: *26 Ընդ ղևտացիսն խօսեսցիս՝ և ասասցես ցնոսա. եթէ առնուցուք յորդւոցն Իսրայէլի տասանորդս՝ զոր ետու ձեզ. հանիցէք և դուք անտի հաս Տն. զտասանորդն 'ի տասանորդէ: *27 Եւ համարեսցի ձեզ հասն ձեր իբրև զցորեան 'ի կալոյ՝ և իբրև զպտուղ 'ի հնձանէ: *28 Այնպէս և դուք հանիցէք 'ի հասից անտի Տն յամենայն տասանորդաց ձերոց՝ զոր առնուցուք յորդւոցն Իսրայէլի. և տայցէք 'ի նոցանէ հաս Տն Ահարոնի քահանայի: *29 Յամ տրոցն ձերոց հանիցէք հաս. և յամենայն պտղոց զնուիրեալն 'ի նմանէ: *30 Եւ ասասցես ցնս. յորժամ հանիցէք զպտուղն 'ի նմանէ. համարեսցի ղևտացւոցն իբրև զարդիւնս 'ի կալոյ. և իբրև զպտուղ 'ի հնձանէ: *31 Եւ կերիջիք զայն յամ տեղւոջ. դուք և տունք ձեր. զի վարձ ձեր է այն. փոխանակ պաշտամանցն ձերոց 'ի խորանին վկայութեան: *32 Եւ մի՛ առնուցուք վասն այնորիկ մեղս և յորժամ հանիցէք զպտուղն 'ի նմանէ զսրբութիւն որդւոցն Իսրայէլի. ոչ պղծիցէք. զի մի՛ մեռանիցիք:

‖ Բ. Օրէ 10. 9. և 18. 2. Յեսու. 13. 14. և 33. Եզեկ. 44. 3.

‖ Բ. Օրէ 18. 1.

## ԳԼ: ԺԹ:

1 Խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ընդ Ահարոնի՝ և ասէ: *2 Այս որոշումն է օրինացն՝ զոր պատուիրեաց

Տր մովսէսի և ասէ. խօսեաց ընդ որդիսն իսրայէլի՝ և առցեն առ քեզ զերինջ մի կարմիր անարատ. յորում ոչ գուցէ բիծ ինչ՝ և ոչ իցէ մտեալ ընդ լծով: * 3 Եւ տացես զնա եղիազար քահանայի: ‖ և հանցեն զնա արտաքոյ բանակին 'ի տեղի սուրբ. և սպանցեն զնա առաջի նր: * 4 ‖ Եւ առցէ եղիազար յարենէ նր. և ցանեսցէ յանդիման խորանին վկայութե յարենէ նր եօթն անգամ: * 5 Եւ այրեսցեն զնա առաջի նորա. և մորթ նր. և միս նր. և արիւն նր. հանդերձ աղբովն նր այրեսցի: * 6 Եւ առցէ քահանայն փայտ եղեւնեայ. և զոպայ. և կարմիր. և արկցեն 'ի մէջ այրեցածի երնջուն: * 7 Եւ ողողեսցէ զհանդերձս իւր քահանայն. և լուասցէ զմարմին իւր ջրով: և ապա մտցէ 'ի բանակն: և անսուրբ լիցի քահանայն մինչև ցերեկոյ: * 8 Եւ որ այրիցէ զնա, ողողեսցէ զհանդերձս իւր. և լուասցէ զմարմին իւր ջրով. և անսուրբ լիցի մինչև ցերեկոյ: * 9 Եւ ժողովեսցէ այր սուրբ զմոխիր երնջուն. և կուտեսցէ արտաքոյ բանակին 'ի սուրբ տեղւոջ. և եղիցի ժողովրդեան որդւոցն իսրէլի 'ի պահեստ ջուր սրսկման՝ զի սրբութի է: * 10 Եւ լուասցէ զմարմին իւր՝ որ ժողովիցէ զմոխիր երնջուն. և ողողեսցէ զհանդերձս իւր. և անսուրբ լիցի մինչև ցերեկոյ. և եղիցի ժողովրդեան որդւոցն իսրէլի, և եկացն յեկելոց 'ի նոսա օրէն յաւիտենական: * 11 Եւ որ մերձենայցէ 'ի մեռեալ անձն մարդոյ, անսուրբ լիցի զեօթն օր: * 12 Եւ սրբեսցի նա յաւուրն երրորդի՝ և յաւուրն եօթներորդի. և ապա սուրբ լիցի: ապա թէ ոչ սրբեսցի յաւուրն երրորդի՝ և յաւուրն եօթներորդի, մի լիցի սուրբ: * 13 Ամենայն որ մերձենայցէ 'ի մեռեալ անձն մարդոյ՝ որ մեռանիցի, և ոչ սրբիցի, զխորանն Տն պղծեաց. սատակեսցի անձն այն յիսրայէլէ. զի ջուրն սրսկման ոչ սրսկեցաւ 'ի վերայ նր անսուրբ է. զի պղծութի իւր 'ի նմա է: * 14 Եւ այս օրէն իցէ մարդոյ՝ որ մեռանիցի 'ի տան. ամ որ մտցէ 'ի տունն, և որ ինչ կայցէ 'ի տանն, անսուրբ լիցին զեօթն օր: * 15 Եւ ամ աման բաց՝ որ ոչ իցէ խփեալ՝ կամ սերեկեալ՝ պիղծ լիցի: * 16 Եւ ամ որ մերձենայցէ ընդ երեսս դաշտի 'ի վիրաւոր կամ 'ի մեռեալ՝ կամ յոսկր մարդոյ, կամ 'ի գերեզման, պիղծ լիցի զեօթն օր: * 17 Եւ առցեն պղծելոյն 'ի մոխրոյ այրեցելոյն սրբութե. և արկցեն 'ի վերայ նորա ջուր յամանի: * 18 Եւ առցէ զոպայ. և թացցէ 'ի ջուրն այր սուրբ. և ցանեսցէ զտամբն. և զկահիւքն. և զամանօքն՝ և զանձամբքն՝ որք իցեն անդ. և զմերձեցելովն յոսկր մարդոյ. կամ 'ի վիրաւոր. կամ 'ի մեռեալ. կամ 'ի գերեզման: * 19 Եւ ցանեսցէ սուրբն զպղծովն յաւուրն երրորդի. և յաւուրն եօթներորդի. և սրբեսցի յաւուրն եօթներորդի. և ողողեսցէ զհանդերձս իւր. և լուասցէ զմարմին իւր ջրով. և անսուրբ լիցի մինչև ցերեկոյ: * 20 Եւ մարդ՝ որ պղծիցի՝ և ոչ սրբիցի, սատակեսցի անձն այն 'ի ժողովրդենէ իւրմէ. զի զսրբութիւն Տն պղծեաց: և ջուր սրսկմանն ոչ սրսկեցաւ զնովաւ. անսուրբ է: * 21 Եւ եղիցի ձեզ այն օրէն յաւիտենական: և որ սրսկիցէ զջուրն սրսկման՝ լուասցէ զձորձս իւր. և որ մերձենայցէ 'ի ջուրն սրսկման՝ անսուրբ լիցի մինչև ցերեկոյ: * 22 Եւ ամենայն ինչ՝ յոր մերձենայցէ պղծեալն՝ անսուրբ լիցի մինչև ցերեկոյ: և անձն՝ որ մերձենայցէ 'ի նա՝ անսուրբ լիցի մինչև ցերեկոյ:

‖ Եբրայ. 13. 13.
‖ Ղեւտ. 16. 14.

## Գլ: Ի:

1 Եւ եկին որդիքն իսրայէլի ամ ժողովրդեամբքն յանապատն սինայի՝ յառաջնում ամսեանն. և բնակեցաւ ժողովուրդն 'ի կադէս. և վախճանեցաւ անդ մարիամ. և անդ թաղեցաւ: * 2 Եւ ոչ գոյր անդ ջուր ըմպելոյ ժողովրդեանն. և կուտեցան 'ի վր մովսէսի և ահարոնի: * 3 Եւ բամբասեաց ժողովուրդն զմովսէս՝ և ասեն. լաւ էր թէ մեռեալ էաք 'ի կորստեան եղբարց մերոց առաջի Տն: * 4 ‖ Եւ ընդէ՞ր ածիք զժողովուրդս Տն յանապատ. կոտորել զմեզ՝ և զանասուն մեր: * 5 Եւ ընդէ՞ր հանէք զմեզ յերկրէն եգիպտացւոց, գալ 'ի տեղիս յայս չար. 'ի տեղի՝ ուր ոչ սերմն սերմանի, և ոչ սեխենիք. և ոչ այգիք. և ոչ նռնենիք. և ոչ ջուր գոյ ըմպելոյ: * 6 Եւ մտին մովսէս և ահարոն յերեսաց ժողովրդեանն 'ի դուռն խորանին վկայութե. և անկան 'ի վր երեսաց իւրեանց: և երևեցան փառքն Տն 'ի վր նց: * 7 Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի և ասէ. * 8 Առ դու զգաւազանն. և եկեղեցացո զժողովուրդն. դու և ահարոն եղբայր քո. և բարբառեսջիք 'ի վերայ վիմին յանդիման նց. և տացէ զջուրս իւր: և հանջիք նոցա ջուր 'ի վիմէ անտի: և արբուսջիք ժողովրդեանն, և անասնոց նց: ‖ * 9 Եւ էառ մովսէս զգաւազանն յանդիման Տն որպէս հրամայեաց նմա Տր: * 10 Եւ ժողովեցին մովսէս և ահարոն զժողովուրդն

‖ Ելից. 17. 3.
‖ Ելից. 17. 5. և 6.
Իմաստ. 11. 4.

հան_

հանդէպ վիմին։ և ասէ ցնս․ լուարուք
ինձ անհաւանք․ ‖ միթէ ՚ի վիմէս
յայսմանէ հանիցեմք ջուր։ * Եւ 11
ամբարձեալ մովսէսի զձեռն իւր, եհար
զվէմն երկիցս անգամ․ և ել ջուր բա
զում․ և արբ ժողովուրդն՝ և անա
սուն նոցա։ * Եւ ասէ Տր ցմովսէս և 12
ցահարոն․ ‖ փոխանակ զի ոչ հաւատա
ցէք դուք ինձ, սրբ առնել զիս առաջի
որդւոցն իէլի․ վն այդորիկ ոչ տանի
ցէք դուք զժողովուրդդ յերկիրն՝ զոր
ետու դոցա։ * Այն է ջուր բամբա 13
սանաց․ զի բամբասեցին որդիքն իս
րայէլի առաջի Տն․ և սրբեցաւ ՚ի նս։
* Եւ առաքեաց մովսէս հրեշտակս ՚ի 14
կադէսայ՝ առ արքայն եդովմայ՝ և ա
սէ․ այսպէս ասէ եղբայր քո իէլ՝ դու
ինքնին գիտես զամ աշխատութիւն՝
որք գտին զմեզ։ * Եւ ոպ̃ իջին հարքն 15
մեր յեգիպտոս․ և պանդխտեցաք յե
գիպտոս աւուրս բազումս․ և չարչա
րեցին զմեզ եգիպտացիքն․ և զհարսն
մեր։ * Եւ բողոքեցաք առ Տէր․ և 16
լուաւ Տէր ձայնի մերում․ և առա
քեալ զհրեշտակ՝ եհան զմեզ յեգիպ
տոսէ։ և արդ՝ եմք մեք ՚ի կադէս քա
ղաքի՝ ՚ի կողմն մի սահմանաց քոց։
* Եւ արդ անցցուք ընդ երկիր քո։ և 17
ոչ անցցուք ընդ անդս քո․ և ոչ ընդ
այգիս քո․ և ոչ արբցուք ջուր ՚ի ջր
հորոց քոց․ ճանապարհ զարքունի
գնասցուք․ ոչ խոտորեսցուք յաջ կամ
յահեակ՝ մինչև անցցուք ըստ սահ
մանս քո։ * Եւ ասէ ցնա եդոմ․ մի 18
անցանիցես ընդ իս․ ապա թէ ոչ՝ պա
տերազմաւ ելից ընդդէմ քո։
* Եւ ասեն ցնա որդիքն իսրայէլի։ 19
առ լերամբդ անցցուք․ և եթէ արբ
ցուք ՚ի ջրոյ քումմէ ես և խաշինք իմ․
տացուք քեզ զգինս։ արդ ոչինչ են
իրքդ՝ անցցուք առ լերամբդ։ * Եւ 20
նա ասէ․ ոչ անցցես ընդ իս։ և ել ե
դոմ ընդդէմ նոցա ծանր ամբոխիւ
և հզօր ձեռամբ։ * Եւ ոչ կամեցաւ 21
եդոմ տալ անց իսրայէլի ընդ սահ
մանս իւր։ և խոյս ետ իսրայէլ ՚ի
նմանէ։ * ‖ Եւ չուեցին ՚ի կադէսայ․ 22
և եկին որդիքն իսրայէլի ամենայն ժո
ղովրդեամբքն ՚ի հովր լեառն։ * Եւ 23
խօսեցաւ Տէր ընդ մովսէսի և ընդ ա
հարոնի ՚ի հովր լերինն․ ՚ի սահմանս
երկրին եդոմայեցւոց՝ և ասէ։
* Յաւելցի ահարոն առ ժողովուրդ 24
իւր․ զի մի մտցէք յերկիրն՝ զոր ետու
որդւոցն իսրայէլի․ քանզի բարկա
ցուցէք զիս ՚ի վերայ ջուրցն բամբա
սանաց։ * ‖ Առ դու զահարոն՝ և զե 25
ղիազար զորդի նորա․ և հան զնոսա ՚ի

‖ Սաղմ․ 77․ 15․ և 20․ 1․ Կորն․ 10․4․

‖ 2․ Օրէ․ 1․37․ Թւոց․ 27․14․

‖ Թւոց․ 33․37․

‖ Թւոց․ 33․38․

հովր լեառն յանդիման ամենայն ժո
26 ղովրդեանն։ * Եւ մերկացո յահարո
նէ զպատմուճան նորա․ և զգեցուս
ցես եղիազարու որդւոյ նորա։ և ա
հարոն յաւելեալ մեռցի անդ։
27 * Եւ արար մովսէս՝ որպէս և հրամայ
եաց նմա Տէր։ և եհան զնա ՚ի հովր
լեառն առաջի ամ ժողովրդեանն։
28 * ‖ Եւ մերկացոյց յահարոնէ զհան
դերձս նորա․ և զգեցոյց զնոսա եղիա
29 զարու որդւոյ նորա։ * Եւ մեռաւ
ահարոն ՚ի գլուխ լերինն։ և իջին մո
վսէս և եղիազար ՚ի լեռնէ անտի։
30 * Եւ ետես ամենայն ժողովուրդն
թէ վախճանեցաւ ահարոն․ և լացին
զահարոն զերեսուն օր ամ տունն
իսրայէլի։

## ԳԼ: ԻԱ։

1 Եւ լուաւ քանանիս արքայ արա
դայ՝ որ բնակեալ էր առ անա
պատաւն․ եթէ եկն իսրայէլ զճանա
պարհն աթարինայ․ ետ պատերազմ
ընդ իսրայէլի․ և էառ ՚ի նոցանէ գե
2 րի։ * Եւ ուխտեաց իսրայէլ ուխտ
Տն և ասէ։ եթէ մատնեսցես ընդ
ձեռամբ իմով զազգն զայն․ նզովե
3 ցից զնա և զքաղաքս նորա։ * Եւ
լուաւ Տր ձայնի իսրայէլի․ և մատ
նեաց զքանանացին ՚ի ձեռս նորա․ և
նզովեաց զնա և զքաղաքս նորա․ և
կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ հոր
4 մա․ այս է նզովս։ * Եւ չուեալ ՚ի
հովր լեռնէ ընդ ճանապարհ կարմիր
ծովուն՝ պատեցան զեդովմաւ․ և յոգ
նեցան ժողովուրդն ՚ի ճանապարհին։
5 * Եւ բամբասեաց ժողովուրդն զԱծ
և զմովսէս՝ և ասեն․ ընդէ՞ր հաներ
զմեզ յեգիպտոսէ կոտորել զմեզ յա
նապատիս յայսմիկ․ զի ոչ գոյ հաց՝ և
ոչ ջուր․ և անձինք մեր տաղտկա
6 ցեալ են ՚ի սնոտի հացէս։ * ‖ Եւ ա
ռաքեաց Տր ՚ի ժողովուրդն օձս կոտո
րիչս․ և հարկանէին զժողովուրդն․ և
մեռաւ ժողովուրդ բազում յորդ
7 ւոցն իսրայէլի։ * Եւ եկին առ մովսէս՝
և ասեն․ մեղաք՝ զի խօսեցաք չար
զՏէ և զքէն։ արդ կաց յաղօթս առ
Տր․ և բարձցէ ՚ի մէնջ զօձսդ։ և եկաց
մովսէս յաղօթս առ Տր վասն ժողովր
8 դեանն։ * Եւ ասէ Տր ցմովսէս․ արա
դու քեզ օձ․ և դիցես զնա ՚ի վերայ
նշանակի։ և եղիցի յորժամ հարկանի
ցէ օձ զմարդ, ամ օձահար՝ որ տեսա
9 նիցէ զնա՝ կեցցէ։ * ‖ Եւ արար մովսէս
օձ պղնձի՝ և կացոյց զնա ՚ի վր նշանա
կին․ և լինէր՝ յորժամ հարկանէր օձ
զմարդ, հայէր ՚ի օձն պղնձի, և կեայր։

Եւ

2․ Օրէ․ 32․ 50․

‖ 2․ Օրէ․ 10․ 6․

‖ Յովհ․ 8․21․ Իմաստ․ 16․5․ 1․ Կորն․ 10․9․

‖ Յովհ․ 3․14․



10 * Եւ չուեցին որդիքն իսրայէլի և եկին բանակեցան յաբովթ ։ 11 * Եւ չուեալ յաբովթայ բանակեցան յաքէլգայի յայնկոյս անապատին՝ որ է յանդիման մովաբայ յարևելից կողմանէ ։ 12 * Անտի չուեցին՝ և բանակեցան ’ի ձորն զարեդ ։ 13 * Անտի չուեալ բանակեցան յայնկոյս առնոնայ յանապատին առ ելիւք սահմանացն ամորհացւոց ․ ‖ քանզի առնոն սահման է մովաբացւոց ։ ընդ մովաբայիս ․ և ընդ ամորհացւոց ։ 14 * Վասն այնորիկ ասի ’ի գրի ։ պատերազմ Տն̄ ․ զովգ հրձիգ արար՝ և զձորն առնոնայ ։ 15 * Եւ հաստատեաց զձորսն բնակելոյ յէր , որ առ ընթեր կայ սահմանացն մովաբու ։ 16 * Եւ անտի քան զնա ջրհորն ․ այն է ջրհորն՝ զորմէ ասաց Տր̄ ցմովսէս ․ ժողովեա զժողովուրդն՝ և տաց նց̄ ջուր ըմպելոյ ։ 17 * Յայնժամ օրհնեաց իէլ զօրհնութիւս զայս ’ի վերայ ջրհորոյն ․ նուագեցէք նմա ։ 18 * Ջրհորն՝ զոր իշխանք փորեցին ․ և տաշեցին զնա թագաւորք ազգաց ’ի թագաւորութեն իւրեանց՝ և ’ի տիրել իւրեանց ․ և ’ի ջրհորոյ անտի ’ի մանթանին ։ 19 * Եւ ’ի մանթանինայ ’ի մանայէլ ․ և ’ի մանայէլէ ’ի բամովթ ։ 20 * Եւ ’ի բամովթայ յանայէն ․ որ է ’ի դաշտին մովաբայ ․ ’ի կատարէ կոփածոյին՝ որ հայի ընդ անապատն ։ 21 * ‖ Եւ առաքեաց մովսէս հրեշտակս առ արքայն ամորհացւոց

[‖ Դատ. 11.13.]
[‖ 2. Օրէ 2.26.]

22 բանիւք խաղաղութե̄ և ասէ ։ * Անցցուք ընդ երկիր քո ․ զճանապարհայն գնասցուք ։ ոչ խոտորեսցուք՝ ոչ յանդս և ոչ յայգիս ․ և ոչ արբցուք ջուր ’ի ջրհորոց քոց ․ զճանապարհ զարքունի գնասցուք մինչև անցցուք ըստ սահմանս քո ։ 23 * Եւ ոչ ետ սեհոն անցանել իէլի ընդ սահմանս իւր ։ և ժողովեաց սեհոն զա̄մ ժողովուրդն իւր ․ և ել տալ պատերազմ ընդ իէլի յանապատին ․ և եկն ’ի սիասար ․ և ետ պատերազմ ընդ իսրայէլի ։ 24 * ‖ Եւ եհար զնա իէլ կոտորմամբ սրոյ՝ և տիրեցին երկրին նորա յառնոնայ մինչև ցյաբօկ ․ մինչև ցորդիսն ամմոնայ ․ զի յազեր է սահման որդւոցն ամմոնայ ։ 25 * Եւ էառ իէլ զամենայն քաղաքսն զայնոսիկ ․ և բնակեցաւ իէլ յա̄մ քաղաքս ամորհացւոց ․ յեսեբոն և յա̄մ արուարձանեայս նորա ։ 26 * Քանզի եսեբոն էր քաղաք սեհոնի արքայի ամորհացւոց ․ և նա նախ եղ պատերազմ ընդ արքային մովաբու՝ և էառ զա̄մ երկիրն նորա յարոյերայ մինչև ցառնոն ։

27 * Վա̄ այնորիկ ասեն ա̄մ առակօսք ․ եկայք յեսեբոն՝ զի շինեսցի և հաստատեսցի քաղաքն սեհոնի ։ 28 * Զի հուր ել յեսեբոնայ և բոց ’ի քաղաքէն սեհոնի ․ և եկեր մինչև ցմովաբ ․ և կլափեաց զարձանսն առնոնայ ։ 29 * ‖ Վայ քեզ մովաբ ։ կորեան ժողովուրդք քամովսայ ․ և մատնեցան ուստերք նոցա ’ի փախուստ ․ և դստերք նոցա ’ի գերութի̄ թագաւորին ամորհացւոց ։

30 * Եւ զաւակ նց̄ սատակեսցի յեսեբոնէ մինչև ցդեբոն ։ և կանայք նոցա բորբոքեցան հրով ’ի վերայ մովաբու ։ 31 * Եւ բնակեցաւ իէլ յա̄մ քաղաքս ամորհացւոցն ։ 32 * Եւ առաքեաց մովսէս լրտեսել զյազեր ․ և առին զնա և զաւանս նր̄ ․ և հանին զամորհացին՝ որ բնակեալ էր ’ի նմա ։ 33 * ‖ Եւ կրկնեցան՝ ելին ընդ ճանապարհն ’ի բասան ։ և ել ովգ թագաւոր բասանու ընդդէմ նոցա և ա̄մ ժողովուրդն նր̄ ’ի պատերազմ յեդրային ։ 34 * ‖ Եւ ասէ Տր̄ ցմովսէս ․ մի երկնչիր ’ի նմանէ ․ զի ’ի ձեռս քո մատնեցի զնա՝ և զա̄մ ժողովուրդն նր̄ ․ և զամենայն երկիր նր̄ ։ և արասցես ընդ նմա՝ որպէս արարեր ընդ սեհոն արքայ ամորհացւոց՝ որ բնակեալ էր յեսեբոն ։ 35 * Եւ եհար զնա և զորդիս նորա՝ և զամենայն ժողովուրդն նր̄ ։ մինչև ամենևին չմնալ ’ի նոցանէ ապրեալ ․ և ժառանգեցին զերկիրն նոցա։

[Դատ. 11.19.]
[‖ Յես. 24.8.]
[‖ Սաղ. 134.11.]
[Ամո. 2.9.]
[‖ Դատ. 11.17.]
[3. Թագ. 11.7.]
[‖ 2. Օրէ 3. 3. և 29.7.]
[‖ Սաղ. 135.20.]

## ԳԼ. ԻԲ.

1 Եւ չուեալ որդւոցն Իսրայէլի բանակեցան յարեւմտից Մովաբու առ Յորդանանու յանդիման Երիքովի։ 2 *Եւ տեսեալ Բաղակայ որդւոյ Սեպփորայ զամենայն, զոր արար Իսրայէլ ընդ Ամորհացիսն։ 3 *Երկեաւ Մովաբ յոյժ 'ի ժողովրդեանն. զի բազում էին. եւ զանգիտեաց Մովաբ յերեսաց որդւոցն Իսրայէլի։ 4 *Եւ ասէ Մովաբ ցծերակոյտն Մադիամու. արդ լիզանէ ժողովուրդս այս զամենայն, որք շուրջ զմեօք են՝ որպէս լիզանէ արջառ զդալար 'ի դաշտի։ Եւ Բաղակ որդի Սեպփովրայ էր արքայ Մովաբու 'ի ժամանակի յայնմիկ։ 5 *‖Եւ առաքեաց հրեշտակս առ Բաղաամ որդի Բէովրայ՝ առ Փաթուրն. որ էր առ գետեզերբ երկրին որդւոց ազգին իւրոյ. կոչել զնա եւ ասել. ահա ազգ ել յԵգիպտոսէ՝ եւ ծածկեաց զերեսս երկրի. եւ նստի սա մօտ առ իս։ 6 *Եւ արդ եկ՝ եւ անէծ ինձ զժողովուրդս զայս. զի զօրագոյն քան զիս է սա։ Թերեւս կարասցուք հարկանել 'ի սոցանէ. եւ հանից զսա յերկրէ իմմէ։ Քանզի գիտեմ, թէ զոր օրհնես դու օրհնեալ է. եւ զոր անիծանես՝ անիծեալ։ 7 *Եւ գնացին ծերակոյտն Մովաբու՝ եւ ծերակոյտն Մադիամու. եւ ըղձութիւնք 'ի ձեռս նոցա։ Եկին առ Բաղաամ. եւ ասացին նմա զպատգամսն Բաղակայ։ 8 *Եւ ասէ ցնոսա. ագարուք աստ զայս գիշեր. եւ արարից ձեզ պատասխանի իրացդ. ինչ զոր Տր խօսեսցի ընդ իս. եւ ագան իշխանքն Մովաբու առ Բաղաամու։ 9 *Եւ եկն Ած առ Բաղաամ, եւ ասէ ցնա. զի՞ են արքդ այդոքիկ առ քեզ։ 10 *Եւ ասէ Բաղաամ ցԱծ. Բաղակ որդի Սեպփովրայ արքայ Մովաբու առաքեաց զդս առ իս՝ եւ ասէ։ 11 *Ահա ազգ ել յԵգիպտոսէ՝ եւ ծածկեաց զերեսս երկրի. եւ նստի սա մօտ առ իս. արդ եկ՝ եւ անէծ դու զսոսա ինձ. թերեւս կարացից հարկանել զսա. եւ հանից զսա յերկրէ իմմէ։ 12 *Եւ ասէ Ած ցԲաղաամ. մի՛ երթար ընդ նոսա. եւ մի՛ անիծանիցես զժողովուրդն՝ քանզի օրհնեալ է։ 13 *Եւ յարուցեալ Բաղաամ ընդ առաւօտն՝ ասէ ցիշխանսն Բաղակայ. գնացէք անդրէն առ տէրն ձեր. զի ոչ թողու զիս Ած գալ ընդ ձեզ։ 14 *Եւ յարուցեալ իշխանքն Մովաբու եկին առ Բաղակ՝ եւ ասեն. ոչ կամեցաւ Բաղաամ գալ ընդ մեզ։ 15 *Եւ յաւել առաքել Բաղակ իշխանս բազումս՝ եւ պատուականագոյնս քան զնոսա։ 16 *Եւ եկին առ Բաղաամ, եւ ասեն ցնա. այսպէս ասէ Բաղակ Սեպփովրեան. աղաչեմ զքեզ՝ 17 մի՛ դանդաղիցես գալ առ իս։ *Զի պատուելով պատուեցից զքեզ. եւ զոր ինչ ասիցես՝ արարից քեզ. եւ արդ եկ՝ եւ անէծ ինձ զժողովուրդս զայս։

18 *‖Պատասխանի ետ Բաղաամ, եւ ասէ ցիշխանսն Բաղակայ՝ եթէ տացէ ինձ Բաղակ լի տամբ իւրով արծաթ եւ ոսկի. ոչ կարացից անցանել զբանիւ Տն Այ. առնել զնա փոքր կամ 19 մեծ մտօք իմովք։ *Եւ արդ ագարուք դուք աստ զգիշերս զայս. եւ գիտացից՝ զի՞նչ յաւելցի Տր խօսել ընդ իս։ 20 *Եւ եկն Ած առ Բաղաամ 'ի գիշերին՝ եւ ասէ ցնա. եթէ կոչել զքեզ եկեալ են արքդ այդոքիկ. արի՛, երթ զկնի դոցա. բայց զբանն՝ զոր ես խօսեցայց 21 ընդ քեզ՝ զայն արասցես։ *Եւ յարուցեալ Բաղաամ ընդ առաւօտն հանդերձեաց զէշ իւր. եւ գնաց ընդ 22 իշխանսն Մովաբու։ *‖Եւ բարկացաւ սրտմտութբ Ած ընդ երթալն նր. եւ եկաց հրեշտակ Այ լինել նմա բանսարկու. եւ նա հեծեալ էր 'ի վր իշոյ իւրոյ. եւ երկու պատանիք նր ընդ նմա։



23 *‖Եւ տեսեալ իշոյն զհրեշտակ Այ զի կայր նմա ընկրկեալ 'ի ճանապարհին. եւ սուսեր մերկ 'ի ձեռին իւրում, խուսեաց էշն 'ի ճանապարհէն՝ եւ երթայր ընդ դաշտն. եւ եհար գաւազանաւ զէշն ուղղել զնա 'ի ճանապարհն։

*Եւ

‖ Յեսու. 24. 9.

‖ Այսր. 24. 13.

‖ 2. Պետ. 2. 15.

‖ Յուդ. 1. 11.

*Եւ եկաց հրեշտակն Տն յաւուլամէջս այգեացն. և էր ցանգ աստի՝ և ցանգ անտի։ 24

*Եւ տեսեալ էշոյն ըզհրեշտակն Տյ՝ նեղեաց զինքն ընդ որմն. և ճմլեաց զոտն բաղաամու. և յաւել ևս հարկանել զնա։ 25

*Եւ յաւել հրեշտակն Տն երթալ կալ ՚ի նեղ տեղւոջ. ուստի ոչ գոյր խուսել յաջ կամ յահեակ։ 26

*Եւ տեսեալ էշոյն զհրեշտակ Տն նստաւ ընդ բաղաամաւ։ և բարկացաւ բաղաամ. և եհար զէշն գաւազանաւն։ 27

*Եւ եբաց Ած զբերան էշոյն. և ասէ ցբաղաամ. զինչ արարի քեզ՝ զի հարեր զիս այս երիցս անգամ։ 28

*Եւ ասէ բաղաամ ցէշն. փոխանակ զի խաղ արարեր զիս։ և եթէ էր սուր ՚ի ձեռին իմում, արդ և խոցեալ էր իմ զքեզ։ 29

*Եւ ասէ էշն ցբաղաամ. ո՞չ ես այն էշ եմ քո՝ յորում հեծանէիր ՚ի մանկութենէ քումմէ մինչև ցայսօր ժամանակի. միթէ յուլանալով յուլացա՞յ ինչ երբէք առնել քեզ այսպէս։ և նա ասէ՝ ոչ։ 30

*Եւ եբաց Ած զաչս բաղաամու. և ետես զհրեշտակն Տն ընկիճեալ նմա ՚ի ճանապարհին. և սուսեր մերկ ՚ի ձեռին իւրում. և անկեալ ՚ի վր երեսաց իւրոց երկիր եպագ նմա։ 31

*Եւ ասէ ցնա հրեշտակն Տն. ընդէ՞ր հարեր դու զէշդ այս երիցսանգամ։ և ահա ելի ես ՚ի բանսարկութի քեզ։ զի ոչէ ճանապարհդ քո ուղիղ առաջի իմ։ 32

*Եւ տեսեալ զիս էշդ խուսափեաց յինէն այս երիցս անգամ։ և եթէ չէր խուսափեալ յինէն, արդ իմ զքեզ սպանեալ էր, և զդա ապրեցուցեալ։ 33

*Եւ ասէ բաղաամ ցհրեշտակն Տն մեղայ. զի ոչ գիտէի՝ թէ դու ինձ ընկիճեալ կայցես ՚ի ճանապարհիս։ և արդ՝ եթէ չիցէ քեզ հաճոյ՝ դարձայց անդրէն։ 34

*Եւ ասէ հրեշտակն Տն ցբաղաամ. երթ դու ընդ արսդ ընդ այդոսիկ. բայց բանի՝ զոր ես ասացից քեզ՝ այնմ զգոյշ լինիջիր խօսելոյ։ և գնաց բաղաամ ընդ իշխանսն բաղակայ։ 35

*Եւ լուեալ բաղակայ եթէ գայ բաղաամ. ել նմա ընդ առաջ ՚ի քաղաքն մովաբու՝ որ է ՚ի սահմանս առնոնայ յեզեր միումսահմանացն։ 36

*Եւ ասէ բաղակ ցբաղաամ. ոչ առաքեցի առ քեզ կոչել զքեզ. ընդէ՞ր ոչ գայիր առիս. որպէս թէ ոչէի արդեօք կարող պատուել զքեզ։ 37

*Եւ ասէ բաղաամ ցբաղակ։ ահաւասիկ եկի առ քեզ. արդ կարո՞ղ իցեմ խօսել բան ինչ. բայց եթէ՝ զոր արկանիցէ Ած ՚ի բերան իմ զայն խօսեցայց։ 38

*Եւ գնաց բաղաամ ընդ բաղակայ. և 39

40 եկն ՚ի քաղաքս հանդրուանացն։ *Եւ եզեն բաղակ զարջառ և ոչխար. և առաքեաց բաղաամու և իշխանացն՝ որք ընդ նմա էին։

41 *Եւ իբրև այգ եղև առեալ ընդ իւր բաղակայ զբաղաամ էհան զնա յարձանն բահաղու։ և եցոյց նմա անտի զմասն ինչ ժողովրդեանն։

## ԳԼ։ ԻԳ։

1 Եւ ասէ բաղաամ ցբաղակ. շինեա ինձ աստ եօթն բագինս. և պատրաստեա դու ինձ աստ եօթն զուարակ՝ և եօթն խոյ։

2 *Եւ արար բաղակ, որպէս և ասաց նմա բաղաամն. և եհան զուարակ և խոյ ՚ի բագինն։

3 *Եւ ասէ բաղաամ ցբաղակ. կա՛ց ՚ի վերայ զոհից քո՝ և ես երթայց. թերևս յայտնեսցի ինձ Ած ընդ առաջելեալ. և բան՝ զոր ցուցցէ ինձ՝ պատմեցից քեզ։ և եկաց բաղակ ՚ի վերայ զոհին իւրոյ. և գնաց բաղաամ հարցանել զԱծ։

4 *Եւ երթայր ուղղորդ։ և երևեցաւ Ած բաղաամու։ և ասէ բաղաամ։ զեօթն բագինս պատրաստեցի. և հանի զուարակ և խոյ ՚ի բագին մի։

5 *Եւ եարկ Ած բան ՚ի բերան բաղաամու. և ասէ։ դարձիր առ բաղակ.

6 և այսպէս խօսեսցիս։ *Եւ դարձաւ առ նա։ և նա կայր ՚ի վերայ ողջակիզացն իւրոց. և ամ իշխանքն մովաբացւոց ընդ նմա։

7 *Եւ եղև հոգի Տն ՚ի վր նորա. և ամբարձեալ զառակս իւր՝ ասէ։ ՚ի միջագետաց կոչեաց զիս բաղակ արքայ մովաբացւոց ՚ի լերանց արևելից՝ և ասէ. եկ՝ նզովեա դու ինձ զյակոբ. և եկ՝ անէծ ինձ զիսրայէլ։

8 *Զի՞նչ նզովեցից՝ զոր ոչ նզովէ Տր. կամ զինչ անիծեցից՝ զոր ո՛չ անիծանէ Ած։

9 *Զի ՚ի լերանց տեսի զնա. և ՚ի բլրոց յառաջագոյն հայեցայ ՚ի նա։ և ահա ժողովուրդ բնակեսցի առանձինն։ և ընդ ազգս մի՛ համարեսցի։

10 *Ո՞ ճշգրտեաց զզաւակն յակոբայ. և ո՛ համարեսցի զգունդսն իսրայէլի. մեռցի անձն իմ ընդ անձինս արդարոցն՝ և եղիցի զաւակ իմ իբրև

11 զզաւակ նց։ *Եւ ասէ բաղակ ցբաղաամ. զինչ գործեցեր ընդ իս. յանիծանել թշնամեաց կոչեցի զքեզ.

12 և դու օրհնեցեր օրհնութբ։ *Եւ ասէ բաղաամ ցբաղակ. ոչ ապաքէն զինչ արկանիցէ Ած ՚ի բերան իմ,

13 զայն զգուշացայց խօսել։ *Եւ ասէ ցնա բաղակ։ եկ դարձեալ ընդ իս յայլ տեղի. ուստի ոչ տեսանիցես զնա. այլ զմասն ինչ ՚ի նմանէ տեսանիցես։ և զամենեսեան ոչ տեսանիցես. և

14 անէծ ինձ զնա անտի։ *Եւ էառ գնաց

զնա

զնա յագարակս դիտանոցին ։ ՚ի կատար կոփածոյին ։ և շինեաց անդ զեօթն բագինս․ և եհան զուարակ և խոյ ՚ի բագինն ։ 15 *Եւ ասէ բաղաամ ցբաղակ․ կաց ՚ի վերայ զոհից քոց․ և ես երթայց հարցանել զԱ.Ծ ։ 16 *Եւ եկն առաջ եղև Ա.Ծ բաղաամու՝ և եարկ բան ՚ի բերան նորա․ և ասէ․ դարձիր անդրէն առ բաղակ․ և այսպէս խօսեսցիս ։ 17 *Եւ դարձաւ առ նա․ և նա կայր ՚ի վերայ ողջակիզին իւրոյ ։ և ամ իշխանքն մովաբացւոց ընդ նմա ։ և ասէ ցնա բաղակ․ զինչ խօսեցաւ Տր ։ 18 *Եւ ամբարձեալ զառակս իւր՝ ասէ ։ արի բաղակ՝ և լուր ։ ունկն դիր վկայդ որդի սեպփորայ ։ 19 *Ոչ իբրև զմարդ է Ա.Ծ ՚ի զարթնուլ․ և ոչ իբրև զորդի մարդոյ ՚ի սպառնալ ։ դու ասացեր՝ թէ ոչ արասցէ․ խօսեսցի, և ոչ կացուսցէ ։ 20 *Ահա յօրհնել առեալ եմ ։ օրհնեցից, և ոչ դարձուցից ։ 21 *Ոչ լիցի աշխատութի ՚ի յակոբ՝ և մի երևեսցի վաստակ ՚ի մէջ իղի ։ Տր Ա.Ծ նր ընդ նմա ։ փառաւորութիք իշխանաց ՚ի նմա ։ 22 *‖ Եւ Ա.Ծ որ եհան զնոսա յեգիպտոսէ՝ իբրև փառք միեղջերուի ՚ի վերայ նորա ։ 23 *Զի ոչ գոն հմայք ՚ի յակոբ․ և ոչ ըղձութիք ՚ի մէջ իղի․ ըստ ժամանակի պատմեսցի յակոբայ՝ և իղի, զինչ կատարելոց իցէ Ա.Ծ ։ 24 *Ահա ժողովուրդն իբրև զկորիւն առիւծու յարիցէ․ իբրև զառիւծ նազեսցի․ և ոչ ննջեսցէ մինչև կերիցէ որս․ և զարիւն վիրաւորաց արբցէ ։ 25 *Եւ ասէ բաղակ ցբաղաամ․ մի անիծանելով անիծաներ ինձ զնա․ և մի օրհնելով օրհնեսցես զնա ։ 26 *Պատասխանի ետ բաղաամ, և ասէ ցբաղակ․ ոչ խօսեցայ ընդ քեզ բանս՝ և ասեմ․ թէ զոր ինչ խօսեսցի ընդ իս Ա.Ծ զայն արարից ։ 27 *Եւ ասէ բաղակ ցբաղաամ․ եկ՝ տարայց զքեզ յայլ տեղի ։ թերևս հաճոյ լիցի Ա.Յ ։ և անիծանիցես ինձ զնա անտի ։ 28 *Եւ տարաւ բաղակ զբաղաամ ՚ի կատարն փոգովրայ՝ որ ձգի յանապատն ։ 29 *Եւ ասէ բաղաամ ցբաղակ ։ շինեա ինձ աստ եօթն բագինս ։ և պատրաստեա ինձ եօթն զուարակ՝ և եօթն խոյ ։ 30 *Եւ արար բաղակ՝ որպէս և ասաց նմա բաղաամ ։ և եհան զուարակ և խոյ ՚ի բագինն ։

Փառփոյ

‖ Ներ. 24.8.

## ԳԼ․ ԻԴ․

1 Եւ տեսեալ բաղաամու թէ բարւոք թուի առաջի Տն օրհնել զիղ ։ ոչ չոգաւ ըստ սովորութե ընդ առաջ հմայիցն ։ դարձոյց զերեսս իւր 2 յանապատն ։ *Եւ ամբարձեալ բաղաամու զաչս իւր ետես զիղ բանակեալ ըստ ցեղից ցեղից ։ և եղև հոգի 3 Ա.Յ ՚ի վերայ նր ։ *Եւ ամբարձեալ զառակս իւր՝ ասէ ․ ասէ բաղաամ 4 որդի բէովրայ ։ *Ասէ այրն ճշմարտատես․ որ զտեսիլ Ա.Յ ետես ՚ի քուն 5 աչօք իւրովք բացօք ։ *Իբրև զի գեղեցիկ են տունք քո յակոբ և խո 6 րանք քո իղ ։ *Իբրև զանտառս հովանաւորս․ և իբրև զբուրաստանս առ գետովք․ և իբրև զխորանս՝ զորս կանգնեաց Տէր․ և իբրև զմայրս ՚ի 7 գնացս ջուրց ։ *Եւ ելցէ այր ՚ի զաւակէ նորա․ և տիրեսցէ ազգաց բազմաց․ և բարձրասցի քան զգովգայ թագաւորութի նր․ և աճեսցէ թա 8 գաւորութի նր ։ *Ա.Ծ առաջնորդեաց նմա յեգիպտոսէ ։ ‖ իբրև փառք միեղջերուի ՚ի վր նորա ։ կերիցէ զազգս թշնամեաց իւրոց ։ և զպարարտութի նց ուղղածուծ արասցէ․ և նետիւք իւրովք նետաձիգ լինիցի ՚ի թշնամիս ։ 9 *Եւ բազմեալ հանգեաւ իբրև զառիւծ՝ և իբրև զկորիւն առիւծու․ և ո յարուցանիցէ զնա․ օրհնիչք քո օրհնեսցին․ և անիծիչք քո անիծցին ։ 10 *Եւ բարկացաւ բաղակ բաղաամու․ և ծափ զծափի հարկանէր ։ և ասէ բաղակ ցբաղաամ․ անիծանել զթշնամիս իմ կոչեցի զքեզ․ և ահա օրհնելով օրհնեցեր զնա այս երիցս անգամ ։ 11 *Եւ արդ փախիր դու ՚ի տեղի քո ։ ասացի պատուել զքեզ․ և վրիպեցոյց 12 զքեզ Տր ՚ի փառաց ։ *Եւ ասէ բաղաամ ցբաղակ․ ոչ և ընդ հրեշտակսն քո՝ զոր առաքեցեր առ իս՝ խօսեցայ և 13 ասացի ։ *‖ Եթէ տայցէ ինձ բաղակ լի տամբ իւրով արծաթ և ոսկի․ ոչ կարիցեմ անցանել զբանիւ Տն․ առնել զնա չար կամ բարի յանձնէ իմմէ ։ այլ զոր ինչ ասիցէ Ա.Ծ զայն խօսե 14 ցայց ։ *Եւ արդ ահա գնամ ՚ի տեղի իմ․ եկ՝ տաց քեզ խրատ․ թէ զինչ առնելոց է ժողովուրդն այն ընդ ժողովուրդ քո ՚ի վախճանի աւուրց ։ 15 *Եւ ամբարձեալ զառակս իւր ասէր ։ ասէ բաղաամ որդի բէովրայ․ ասէ 16 այրն ճշմարտատես ։ *Որ լուաւ զպատգամս Ա.Յ․ և հմուտ է գիտութեան բարձրելոյ․ և զտեսիլ Ա.Յ ետես ՚ի 17 քուն աչօք իւրովք բացօք ։ *Ցուցից նմա՝ և ոչ այժմ․ երանեցից, և ոչ ՚ի մօտոյ ։ ‖ Ծագեսցէ աստղ յակոբայ․ և յարիցէ այր յիղէ․ և հարցէ զիշխանս մովաբայ․ և առցէ աւար զամ որդիս 18 սեթայ ։ *Եւ եղիցի նմա եդոմ ժառանգութի եսաւայ թշնամւոյ իւրոյ․

‖ Վեր. 23.22.

‖ Վեր. 22.18.

‖ Մատ. 2. 2.

և Իէլ արար զօրութի՟ւ: 19 *Եւ յարիցէ այր 'ի Յակոբայ: և կորուսցէ զապրեալսն 'ի քաղաքէ անտի: 20 *Եւ տեսեալ զԱմաղէկ՝ ամբարձեալ զառակս իւր ասէ: գլուխ ազգաց Ամաղէկ. և զաւակ նց կորիցէ: 21 *Եւ տեսեալ զԿենեցին՝ ամբարձեալ զառակս իւր ասէ. հզօր է բնակութիւն քո. և թէ դիցես 'ի քարանձաւս զբոյն քո: 22 *Եւ թէ լինիցի 'ի Բէովրայ բոյն խորդախութեան քոյ, Ասորեստանեայք գերեսցեն: 23 *Եւ ամբարձեալ զառակս իւր ասէ: ո՜ ո՞ք կեցցէ յորժամ դնիցէ զայն ԱԾ: 24 *Եւ ելցէ 'ի ձեռաց Կիտացւոց. և չարչարեսցեն զԱսուր: և չարչարեսցեն զԵբրայեցիս: և ինքեանք միանգամայն կորիցեն: 25 *Եւ յարուցեալ Բաղաամ դարձաւ՝ և գնաց 'ի տեղի իւր. և Բաղակ գնաց ընդ իւր կողմն:

(Դանիէ. 11.30.)

## ԳԼ. ԻԵ.

1 Եւ բնակեցաւ Իէլ 'ի Սատտիմ. և պղծեցաւ ժողովուրդն պոռնկել ընդ դստերսն Մովաբու: 2 *Եւ կոչեցին զնոսա 'ի զոհս կռոց իւրեանց. և եկեր ժողովուրդն 'ի զոհից նոցա. և երկիր պագին կռոց նց: 3 *Եւ նուիրեցաւ Իէլ Բէելփեգովրայ: և բորբոքեցաւ սրտմտութի՟ւ Տն 'ի վերայ Իէլի: 4 *Եւ ասէ Տր ցՄովսէս. առ զամենայն իշխանս ժողովրդեանդ, և առակեա՛ զդոսա առաջի Տն յանդիման արեգական. և դարձցի սրտմտութիւն բարկութեան Տն յԻէլէ: 5 *Եւ ասէ Մովսէս ցցեղսն Իսրայէլի. կոտորեցէք իւրաքանչիւր զընտանի իւր զնուիրեալ Բէելփեգովրայ: 6 *Եւ ահա այր Իէլացի դայր՝ ածէր զեղբայր իւր առ կին մադիանացի՝ յանդիման Մովսէսի՝ և յանդիման ամ ժողովրդեան որդւոցն Իէլի: և նք լային առ դրան խորանին վկայութեան: 7 *Եւ տեսեալ Փենեհէսի որդւոյ Եղիազարու՝ որդւոյ Ահարոնի քահանայի՝ յարեաւ 'ի միջոյ ժողովրդեանն. և առեալ զգեղարդն 'ի ձեռն իւր: 8 *Եւ եմուտ զհետ առն Իէլացւոյ 'ի հնոցն. և խոցեաց զերկոսին. զայրն Իէլացի՝ և զկինն ընդ արգանդ իւր. և դադարեաց հարուածն յորդւոցն Իէլի: 9 *Եւ եղեն մեռեալքն 'ի հարուածոյն յայնմանէ քսան և չորս հազարք: 10 *Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի՝ և ասէ: 11 *Փենեհէս որդի Եղիազարու՝ որդւոյ Ահարոնի քահանայի ցածոյց զսրտմտութիւն իմ յորդւոցն Իէլի. 'ի նախանձեցուցանել ինձ զնախանձ իմ 'ի նոսա. և ոչ սատակեցից զորդիսդ Իսրայէլի նախանձու իմով: 12 *Եւ արդ այսպէս ասասցես. ահա ես տացնմա ուխտ խաղաղութեան: 13 *Եւ եղիցի նմա և զաւակի նր յետ նր ուխտ քահանայութեան յաւիտենական: փոխանակ զի քինախնդիր եղև ԱԾ իւրում: և քաւեաց վս որդւոցն Իսրայէլի: 14 *Եւ անուն առն Իէլացւոյ հարելոյ՝ որ հարաւ ընդ կնոջն մադիանացւոյ՝ Զամբրի որդի Սաղօմայ. իշխան տան ազգի որդւոցն Շմաւոնի: 15 *Եւ անուն կնոջն մադիանացւոյ հարելոյ Քազբի. դուստր Սուրայ՝ իշխանի ազգին Ամոթայ՝ տան նահապետութեան մադիանու: 16 *Եւ խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ասէ: 17 *Խօսեաց ընդ որդիսդ Իսրայէլի՝ և ասասցես. թշնամեցայք ընդ մադիանայիսն. և հարկանիցէք զնոսա: 18 *Զի թշնամիք են նոքա ընդ ձեզ նենգութե՟ք. որք նենգեցին զձեզ Փոգովրաւ. և Քազբեաւ դստերբ իշխանին մադիանու քերբն իւրեանց հարեցելով յաւուր հարուածոց վասն Փոգովրայ:

(Յեսու. 22.17. — 2. Օրէ. 4.3. — Ելից. 32.27. — Սաղմ. 105.30. — 1. Մակ. 2.26. — 1. Կորն. 10.8. — Սիրաք. 45.30. — 1. Մակ. 2.54. — Այր. 31.2.)

## ԳԼ. ԻԶ.

1 Եւ եղև յետ հարուածոյն: խօսեցաւ Տր ընդ Մովսէսի և ընդ Եղիազարու քահանայի՝ և ասէ: 2 *Առ զհամար ամ ժողովրդեան որդւոցդ Իէլի. 'ի քսանամենից և 'ի վեր. ըստ տանց նահապետաց իւրեանց. ամ որ ելանիցէ յԻսրայէլէ տալ պատերազմ: 3 *Եւ խօսեցան Մովսէս և Եղիազար քահանայ, յԱրաբովթ Մովաբու առ Յորդանանու յանդիման Երիքովի՝ և ասեն: 4 *'Ի քսանամենից և 'ի վեր. որպէս հրամայեաց Տր Մովսէսի. դու՝ և որդիքդ Իսրայէլի ելեալք յԵգիպտոսէ: 5 *Ռուբէն անդրանիկ Իէլի. և որդիք Ռուբէնի: Ենովք՝ և գունդն Ենովքայ: Փաղղուս. և գունդն Փաղղուսայ: Քարմի, և գունդն Քարմեայ: 6 *Ասրոմ, և գունդն Ասրոմայ: 7 *Այս են գունդք Ռուբէնի. և եղև համարեան նոցա. քառասուն և երեք հազարք (և չորս) և երեսուն: 8 *Եւ որդիք Փաղղուսայ Եղիաբ: 9 *Եւ որդիք Եղիաբու՝ Յամուէլ. և Դաթան և Աբիրոն. սոքա էին անուանիք ժողովրդեանն. և սոքա են՝ որք յարեան 'ի վրն Մովսէսի և Ահարոնի 'ի ժողովրդեանն Կորխայ յարուցելոյ հակառակ Տն: 10 *Եւ բացեալ երկրի զբերան իւր եկուլ զնոսա, և զԿորխ. մահուամբ ժողովրդեանն իւրոյ. յորժամ եկեր հուր զերկերիւր և զյիսուն. և եղեն 'ի նշանակ: 11 *Եւ որդիքն Կորխայ ոչ մեռան: 12 *Եւ որդիք Շմաւոնի. և

(Ծննդ. 46.9. — Ելից. 6.14. — 1. Մնաց. 5.3. — Սիր. 16.1. և 49.)

և գունդ որդւոցն Շմաւոնի։ յամուէլ՝ և գունդ մի յամուէլի։ յամին՝ և գունդ մի յամինայ։ յաքին՝ և գունդ մի յաքինայ։ 13 * Զարա. և գունդ մի զարայի։ սաւուղ, և գունդ մի սաւուղայ։ 14 * Այս են գունդք Շմաւոնի 'ի համարի իւրեանց. քսան և երկու հազար. և երեք հարիւր։

22200

19 * ‖ Եւ որդիք յուդայ՝ էր. և օնան. և սելոմ. և փարէս. և զարա։ և մեռան էր. և օնան յերկրին քանանացւոց։

‖ Ծննդ. 38.3.4.

20 * Եւ եղեն որդիք յուդայի ըստ գնդից իւրեանց. սելոմ, և գունդ մի սելոմայ։ փարէս՝ և գունդ մի փարէսի։ զարա՝ և գունդ մի զարայի։ 21 * Եւ եղեն որդիք փարէսի. եսրոն՝ և գունդ մի եսրոնի։ յամուէլ՝ և գունդ մի յամուէլի։ 22 * Սոքա են գունդք յուդայի ըստ համարի իւրեանց. եօթանասուն և վեց հազար և հինգ հարիւր։ 23 * Եւ որդիք իսաքարու՝ ըստ գնդից իւրեանց. թովղա՝ և գունդ մի թովղայի։ փուա՝ և գունդ մի փուայի։ 24 * Յասուբ, և գունդ մի յասուբայ։ ամրամ՝ և գունդ մի ամրամայ։ 25 * Սոքա են գունդք իսաքարու 'ի համարի իւրեանց. վաթսուն և չորք հազարք և երեք հարիւր։ 26 * Եւ որդիք զաբուղոնի ըստ գնդից իւրեանց. սարեդ և գունդ մի սարեդայ։ աղղոն՝ և գունդ մի աղղոնի։ աղէլ՝ և գունդ մի աղէլայ։ 27 * Այս են գունդք զաբուղոնի 'ի համարի իւրեանց. վեց հազար և հինգ հարիւր։

60500

15 * Եւ որդիք գադայ ըստ գնդից իւրեանց. սափոն՝ և գունդ մի սափոնայ։ անգի՝ և գունդ մի անգեայ։ սունի՝ և գունդ մի սունեայ։ 16 * Ազենի՝ և գունդ մի ազենեայ։ ադդի՝ և գունդ մի ադդեայ։ 17 * Արուադի՝ և գունդն արուադեայ։ արիէլ՝ և գունդն արիէլի։ 18 * Սոքա են գունդք որդւոցն գադայ 'ի համարի իւրեանց. քառասուն և չորք հազարք և հինգ հարիւր։

40500

44 * Եւ որդիքն ասերայ. ըստ գնդից իւրեանց. յամին՝ և գունդ մի յամինայ։ յեսու՝ և գունդն յեսուայ։ բարիա՝ և գունդն բարիայի։ 45 * Քոբեր՝ և գունդն քոբերայ։ մելքիէլ՝ և գունդն մելքիէլի։ 46 * Եւ անուն դստերն ասերայ սարա։ 47 * Սոքա են գունդք ասերայ 'ի համարի իւրեանց. քառասուն և երեք հազար և վեցհարիւր։

53400

28 * Եւ որդիք յովսեփայ մանասէ, և եփրեմ։ 29 * Եւ որդիք մանասէի մաքիր. և գունդ մի մաքիրայ։ ‖ և մաքիր ծնաւ զգաղաադ. գաղաադ՝ և գունդ մի գաղաադու։

‖ Յեսու 17.1.

30 * Եւ որդիք գաղաադու։ աքիեզեր՝ և գունդ մի աքիեզերայ։ քեղեգ՝ և 31 գունդ մի քեղեգայ։ * Եսրիէլ՝ և գունդ մի եսրիէլի։ սիւքեմ, և գունդ 32 մի սիւքեմայ։ * Սիմայի՝ և գունդ մի սիմայեայ։ ‖ ոփեր՝ և գունդ մի ոփերայ։ 33 * Եւ սաղպաադայ որդւոյ ոփերայ ոչ եղեն ուստերք, այլ դստերք։ և անուանք դստերացն սաղպաադայ. ‖ մաադա. և նուա. և էգղա. և մելքա. և թերսա։

‖ Ս այր. 27.1.

‖ Ս այր. 27.1.

34 * Այս գունդք մանասէի 'ի համարի իւրեանց. յիսուն և երկու հազարք և եօթնհարիւր։ 35 * Եւ այս են որդիք եփրեմայ. սուտաղա՝ և գունդ մի սուտաղայի։ տանաք՝ և գունդ մի տանաքայ։ 36 * Սոքա են որդիք սուտաղայի՝ էդեն. և գունդ մի էդենայ։ 37 * Այս գունդք եփրեմայ 'ի համարի իւրեանց. երեսուն և երկու հազարք և հինգհարիւր։ սոքա են գունդք յովսեփայ ըստ գնդից իւրեանց։ 38 * Եւ որդիք բենիամենի ըստ գնդից իւրեանց։ բաղէ՝ և գունդ մի բաղեայ։ ասբեր՝ և գունդ մի ասբերայ։ յաքիրան՝ և գունդ մի յաքիրանայ։ 39 * Սափան՝ և գունդ մի սափանայ։ 40 * Եւ եղեն որդիք բալեայ. ադար՝ և նոյեման. և գունդ մի նոյեմանայ։ 41 * Այս որդիք բենիամենի. ըստ գնդից իւրեանց 'ի համարի իւրեանց. երեսուն և հինգ հազար և հինգ հարիւր։

45600

42 * Եւ որդիք դանայ ըստ գնդից իւրեանց. սամի՝ և գունդ մի սամեայ։ այս են գունդք դանայ ըստ գնդից իւրեանց։ 43 * Ամենայն գունդք սամեայ ըստ համարի իւրեանց, վաթսուն և չորք հազարք և վեցհարիւր։ 48 * Եւ որդիք նեփթաղիմայ ըստ գնդից իւրեանց. ասէլ՝ և գունդ մի ասէլի։ գօնի՝ և գունդ մի գօնեայ։ 49 * Յասեր՝ և գունդ մի յասերայ։ սելլեմ, և գունդ մի սելլեմայ։ 50 * Այս գունդք նեփթաղիմայ 'ի համարի իւրեանց, քառասուն և հինգ հազար և երեք հարիւր։ 51 * Այս է համարն որդւոցն իսրայէլի. վեցհարիւր հազար. և հազար մի. և եօթնհարիւր և երեսուն։

601730

52 * Եւ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի՝ և ասէ։ 53 * Դոցա բաժանեսցի երկիրն ժառանգել ըստ թուոյ անուանց։ 54 * Ըստ բազմաց բազմացուսցես զժառանգութիւն. և ըստ սակաւուց սակաւեցուսցես զժառանգութիւնն իւրեանց։ իւրաքանչիւր որպէս և անցին 'ի համարն տացի ժառանգութիւն իւրեանց։ 55 * Վիճակօք ժառանգեսցի երկիրն՝ ըստ անուանց. ըստ ցեղից նահապետաց իւրեանց ժառանգեսցեն։ 56 * Ի վիճակաց բաժանեսցեն զժառանգութիւն նոցա 'ի մէջ բազմաց և սակաւուց։ 57 * ‖ Եւ որդիքն ղևեայ

‖ Ելից. 6.16.

ղեւեայ ըստ գնդից իւրեանց : գերսոնի՝ և գունդ մի գերսոնի : կահաթ՝ և գունդ մի կահաթու : մերարի՝ և գունդն մերարեայ : 58 *Աա են գունդք որդւոցն ղեւեայ : գունդ մի ղոբենի . և գունդ մի քեբրոնի : գունդ մի կորխ : և գունդ մի մուսի : և կահաթ ծնաւ զամրամ : 59 *Եւ անուն կնոջ նորա յոքաբեթ դուստր ղեւեայ : որ ծնաւ զնոսա յեգիպտոս : և ծնաւ ամրամայ զահարոն . և զմովսէս . և զմարիամ քոյր նոցա : 60 *Եւ ծնան ահարոնի նադաբ, և աբիուդ . եղիազար . և իթամար : 61 *Եւ մեռան նադաբ և աբիուդ, 'ի մատուցանել իւրեանց զհուրն օտար առաջի Տն յանապատին սինայի :

62 *Եւ եղեն 'ի համարին իւրեանց քսան և երեք հազարք : ամ արու յամսօրէից և 'ի վեր : քանզի ոչ անցին 'ի համարի 'ի մէջ որդւոցն իՂի . զի ոչ էր նոցա տուեալ վիճակ 'ի մէջ որդւոցն իսրայելի : 63 *Եւ այս է համարն մովսէսի և եղիազարու քահանայի . որք արարին համարս որդւոցն իՂի յառաբովթ մովաբու առ յորդանանու՝ յանդիման երիքովի : 64 *Եւ ընդ նոսա մի այր ոչ գոյր յանցելոցն 'ի համարէ 'ի մովսիսէ և յահարոնէ՝ զոր արարին համարս որդւոցն իսրայելի յանապատին սինայի : 65 *Քանզի ասաց վնոցանէ Տր՝ թէ մահու մեռանիցին յանապատին . և ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի : բայց քաղէբ որդի յեփոնեայ : և յեսու որդի նաւեայ :

[Լուսանցք. Ելից. 6. 20. — Ղևտ. 10. 1. — Թւր. 3. 4. — Ա. Մնաց. 24. 2. — Ա. Կոր. 10. 5. — Թւր. 14. 23. և 24.]

## ԳԼ. ԻԷ.

1 Եւ մատեան դստերքն սաղպաադու որդւոյ ոփերայ . որդւոյ գաղաադու . որդւոյ մաքիրայ . 'ի գնդէն մանասէի որդւոյ յովսեփայ . և այս են անուանք նոցա . մաղաա . և նուա . և եգղա . և մելքա . և թերսա : 2 *Կացին առաջի մովսէսի և առաջի եղիազարու քահանայի և առաջի իշխանացն . և առաջի ամ ժողովրդեանն 'ի դրան խորանին վկայութեան՝ և ասեն : 3 *Հայր մեր մեռաւ յանապատի անդ . և նա ոչ էր 'ի մէջ ժողովրդեանն գումարելոց առաջի Տն 'ի ժողովրդեանն կորխայ . որ վն մեղաց իւրոց մեռաւ . և որդիք ոչ են նորա : 4 *Եւ արդ մի ջնջեսցի անուն հօր մերոյ 'ի միջոյ ցեղի իւրոյ՝ վասն զի ոչ գոյր նր որդի : տուք մեզ ժառանգութի 'ի մէջ եղբարց հօր մերոյ : 5 *Եւ մատոյց մովսէս զդատաստան նց առաջի Տն : 6 *Եւ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի և ասէ : 7 *Ուղիղ խօսեցան դստերքն սաղպաադու : տուր տալով տացես նոցա կալուածս ժառանգութե 'ի մէջ եղբարց հօր իւրեանց . և դիցես զվիճակ հօրն իւրեանց զնոքօք : 8 *Եւ ընդ որդւոցն իՂի խօսեսջիր, և ասասցես : այր ոք եթէ մեռանիցի . և ուստր ոչ գուցէ նորա, տայցէ զժառանգութիւն իւր դստեր իւրում : 9 *Եւ եթէ ոչ գուցէ նորա դուստր՝ տաջիք զժառանգութի նր եղբօր իւրում : 10 *Եւ եթէ ոչ գուցեն նորա եղբարք, տաջիք զժառանգութի նր հօրեղբօր իւրոյ : 11 *Եւ եթէ ոչ գուցեն եղբարք հօր նորա, տաջիք զժառանգութին ընտանւոյն մերձաւորի նորա . 'ի ցեղէն նր ժառանգեսցէ զնորայն . և եղիցի այդ որդւոցն իՂի իրաւունք դատաստանի՝ որպէս հրամայեաց Տր մովսէսի : 12 *Եւ ասէ Տէր ցմովսէս . Ել դու 'ի լեառն՝ որ յայնկոյս է՝ 'ի լեառն նաբաւ . և տես զերկիրն քանանացւոց՝ զոր ես տաց որդւոցն իՂի 'ի կալուած : 13 *Տեսցես զնա և յաւելցիս առ ժողովուրդ քո և դու . որպէս յաւելաւ ահարոն եղբայր քո 'ի հովր լերինն : 14 *Զանն զի անցէք զբանիւ իմով յանապատին 'ի սին . 'ի հակառակիլ ժողովրդեանն առ 'ի սրբ առնելոյ զիս . և ոչ արարիք զիս սուրբ 'ի վերայ ջրոյն յանդիման նոցա . այն է ջուր հակառակութե յանապատին 'ի սին : 15 *Եւ ասէ մովսէս ցՏէր : 16 *Տեսցէ Տր Ած հոգւոց և ամենայն մարմնոյ՝ զայր 'ի վերայ ժողովրդեանս այսորիկ : 17 *Որ ելանիցէ առաջի սոցա . և որ հանիցէ, և մուծանիցէ զսոսա . և մի լինիցի ժողովուրդս իբրև զոչխարս՝ որոց ոչ իցէ հովիւ : 18 *Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ . Առ դու քեզ զյեսու որդի նաւեայ՝ զայր յորում գոյ հոգի . և դիցես զձեռս քո 'ի վերայ նորա : 19 *Եւ կացուսցես զնա յանդիման եղիազարու քահանայի . և պատուիրեսցես վասն նորա յանդիման նց : 20 *Եւ տացես 'ի փառաց քոց 'ի վերայ նորա՝ զի լուիցեն նմա որդիքն իՂի : 21 *Եւ կացցէ առաջի եղիազարու քահանայի . և հարցցեն 'ի նմանէ զիրաւունս յայտնութեց առաջի Տն . ըստ բանի բերանոյ նր ելանիցեն . և ըստ բանի բերանոյ նր մտանիցեն . ինքն և որդիքն իՂի միաբան . և ամ ժողովուրդն : 22 *Եւ արար մովսէս որպէս պատուիրեաց նմա Տր . և առեալ զյեսու կացոյց առաջի եղիազարու որդւոյ ահարոնի քահանայի . և առաջի ամ ժողովրդեանն : 23 *Եւ եդ զձեռս իւր 'ի վերայ նորա . և արար զնա յանձն՝ որպէս պատուիրեաց Տր մովսէսի :

[Լուսանցք. Թւր. 26. 32. և 33. — Թւր. 36. 1. — Յեսու. 17. 2. — Թւր. 16. 1. և 31. — Բ. Օր. 32. 49. — Թւր. 20. 12. — Բ. Օր. 32. 51. — Բ. Օր. 3. 21.]

ԳԼ.

## ԳԼ: ԻԸ:

Եւ՛ խօսեցաւ Տր̃ ը̃ մովսէսի՝ և ասէ։ 1 *Պատուիրեա՛ որդւոցն իհի, և 2 ասասցես ցն̃ս. զպատարագս իմ, և զդահամունս իմ. և զընծայս իմ՚ի հոտ անուշից՝ զգուշասջի՛ք մատուցանել՚ի տօնս իմ։ *Եւ ասասցես ցն̃ս 3 ‖այսոքիկ են ընծայք՝ զորս մատուցանիցէք Տն̃ գառինս երկուս անարատս համապազ յողջակէզ անպակաս։ *Զմի գառնն արասցես ընդ առաւօտս. և զերկրորդ գառնն արասցեն ընդ երեկոյս։ 4 *Եւ արասցես զտասանորդ գրուի նաշիհ զանդեալ իւղով մզելով՝ չորրորդաւ՛ դորակի։ 5 *Ողջակէզ անպակասութե. որպէս լինէր՚ի լերինն սինայի ՚ի հոտ անուշից Տն̃։ 6 *Եւ՛ նուէր նորուն չորրորդ դորակին առ մի գառն ՚ի սրբութեն. և նուէրեսցես զնուէրն ըմպելի Տն̃։ 7 *Եւ զգառնն երկրորդ արասցես ընդ երեկոյս. ըստ զոհին իւրում՝ և ը̃ նուէրին իւրում արասջի՛ք ՚ի հոտ անուշից Տն̃։ 8 *‖Եւ յաւուրն շաբաթուց մատուսջի՛ք երկուս գառինս տարեւորս անարատս. և երկուս տասանորդս նաշհոյ զանդելոյ իւղով՚ի զոհ։ 9 *Եւ զնուէր ողջակիզին շաբաթուց ՚ի շաբաթս. և ՚ի վերայ հանապազորդ ողջակիզին, և զնորուն նուէր։ 10 *Եւ յամսամուտս մատուսջի՛ք ողջակէզս Տն̃ զուարակս երկուս յանդոյ. և խոյ մի. գառինս տարեւորս եօթն։ 11 *Եւ երիս տասանորդս նաշհոյ զանդելոյ իւղով առ զուարակ մի. և երկուս տասանորդս զանդեալ իւղով առ խոյ մի։ 12 *Եւ՛ տասանորդ նաշհոյ զանդեալ իւղով առ գառն մի. ՚ի հոտ անուշից ընծայ Տն̃։ 13 *Եւ՛ նուէր ն̃ց կէս դորակին գինւոյ լիցի առ զուարակ մի. և երրորդ դորակին լիցի առ խոյ մի. և չորրորդ դորակին լիցի առ գառն մի. այսոքիկ ողջակէզք իցեն ամիս յամսոյ՝ յամիսս տարւոյն։ 14 *Եւ՛ նոխազ մի յայծեաց Տն̃. վս̃ մեղաց իւրեանց ՚ի վերայ հանապազորդ ողջակիզին առնիցի. և նուէրն նորա։ 15 *Եւ՛ ‖յամսեանն առաջնում. ՚ի չորեքտասաներորդում աւուր ամսեանն զատիկ Տն̃։ 16 *Եւ ՚ի հնգետասաներորդում աւուր նորուն ամսոյ՝ տօն. զեօթն օր բաղարջ կերիջի՛ք։ 17 *Եւ՛ օրն առաջին կոչեցեալ սուրբ լիցի ձեզ. զամենայն գործ սպասաւորութե մի՛ գործիցէք։ 18 *Եւ մատուսջի՛ք ողջակէզս և ընծայս Տն̃. զուարակս երկուս յանդոյ. և խոյ մի. գառինս տարեւորս անարատս եօթն։ 19

‖ Ելից. 29.38.
‖ Մատ. 12.5.
‖ Ելից. 12. 18. Ղեւտ. 23.5.

20 *Եւ՛ զոհ նոցա նաշիհ զանդեալ իւղով. երիս տասանորդս առ զուարակ մի. և երկուս տասանորդս առ խոյ մի։ 21 *Եւ՛ տասանորդ տասանորդի արասցես առ գառն մի եօթանեցունց գառանցն։ 22 *Եւ՛ նոխազ մի յայծեաց վս̃ մեղաց. քաւել վս̃ ն̃ց։ 23 *Թո՛ղ զհանապազորդ առաւօտուն ողջակէզն՝ որ է ողջակէզ յաձախութե։ 24 *Զայս ըստ այսմ օրինակի արասջի՛ք աւուր աւուր զեօթն օր՝ պատարագ ողջակէզ ՚ի հոտ անուշից Տն̃. ՚ի վերայ հանապազորդ ողջակիզին առնիցէք զնուէր նորին։ 25 *Եւ օրն եօթներորդ կոչեցեալ սուրբ եղիցի ձեզ. զա̃մ գործ սպասաւորութե մի՛ գործիցէք ՚ի նմա։ 26 *Եւ՛ յաւուրն նորեաց յորժամ մատուցանիցէք զոհ Տն̃ զեօթներորդայսն, կոչեցեալ սր̃ եղիցի ձեզ. զամենայն գործ սպասաւորութե մի՛ գործիցէք։ 27 *Եւ մատուսջի՛ք ողջակէզս ՚ի հոտ անուշից Տն̃. զուարակս երկուս յանդոյ. և խոյ մի. գառինս տարեւորս անարատս եօթն։ 28 *Եւ՛ զոհ ն̃ց նաշիհ զանդեալ իւղով երեք տասանորդք առ զուարակ մի. և երկու տասանորդք առ խոյ մի։ 29 *Եւ տասանորդ տասանորդի առ գառն մի. եօթանեցունց գառանցն։ 30 *Եւ՛ նոխազ մի յայծեաց վս̃ մեղաց. քաւել վս̃ ձեր։ Թո՛ղ զհանապազորդ ողջակէզն։ 31 *Եւ ըզ զոհս նոցա՝ զոր առնիցէք. և զնուէրս նոցա. և անարատք լինիցին ձեզ։

## ԳԼ: ԻԹ:

1 Եւ՛ ‖յամսեանն եօթներորդի՝ որ օր մի իցէ ամսոյն, կոչեցեալ սր̃ եղիցի ձեզ. զամենայն գործ սպասաւորութե մի՛ գործիցէք. օր նշանակելոյ եղիցի ձեզ։ 2 *Եւ՛ արասջի՛ք ողջակէզս ՚ի հոտ անուշից Տն̃. զուարակ մի յանդոյ. խոյ մի՛ գառինս տարեւորս անարատս եօթն։ 3 *Եւ՛ զոհ նոցա նաշիհ զանդեալ իւղով. երիս տասանորդս առ զուարակ մի. և երկուս տասանորդս առ խոյ մի։ 4 *Եւ՛ տասանորդ տասանորդի առ գառն մի եօթանեցունց գառանց։ 5 *Եւ՛ նոխազ մի յայծեաց վասն մեղաց. քաւել վասն ձեր։ 6 *Թո՛ղ զողջակէզսն ամսամտից. և զոհք նոցա՝ և նուէրք իւրեանց ըստ պայմանի իւրեանց ՚ի հոտ անուշից Տն̃։ 7 *‖Եւ՛ ՚ի տասներորդին նորին ամսոյ կոչեցեալ սր̃ եղիցի ձեզ. և ըզկեսջի՛ք զանձինս ձեր. զամենայն գործ սպասաւորութեան մի՛ գործիցէք։ 8 *Մատուսջի՛ք ողջակէզս ՚ի հոտ անուշից ընծայս Տն̃. զուարակ մի յանդոյ. խոյ

‖ Ղեւտ. 16. 29. և 23.24
‖ Ղեւտ. 16. 29. և 23.27

խոյ մի . գառինս տարեւորս անարատս եօթն : 9 * Եւ զոհ նց՟ նաշիհ զանգեալ իւղով . երիս տասանորդս առ զուարակ մի . եւ երկուս տասանորդս առ խոյ մի : 10 * Եւ տասանորդ տասանորդի առ գառն մի, եօթանեցունց գառանցն : 11 * Եւ նոխազ մի յայծեաց վն՟ մեղաց՝ քաւել վասն ձեր . թող զվն՟ մեղացն եւ քաւութե՝ եւ զողջակէզսն հանապազորդս՝ եւ զզոհս նր՟ . եւ զնուէրս նորին ըստ պայմանի իւրում՝ ՚ի հոտ անուշից ընծայ Տն՟ : 12 * Եւ յաւուրն հնգետասաներորդի նորին եօթներորդի ամսոյ կոչեցեալ սուրբ եղիցի ձեզ . զամ՟ գործ սպասաւորութե մի՛ գործիցէք . եւ տօնեսջիք զնա տօն Տն՟ զեօթն օր : 13 * Եւ մատուսջիք ողջակէզս ընծայս ՚ի հոտ անուշից Տն՟ . յաւուրն առաջնում զուարակս յանդոյ երեքտասան . խոյս երկուս . գառինս տարեւորս չորեքտասան . անարատք լինիցին : 14 * Եւ զոհք նց՟ նաշիհ զանգեալ իւղով . երիս տասանորդս առ զուարակ մի՛ երեքտասանեցունց զուարակացն . եւ երկուս տասանորդս առ խոյ մի . երկոցունց խոյոցն : 15 * Եւ տասանորդ տասանորդի առ մի մի գառն չորեքտասանեցունց գառանցն : 16 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզս՝ եւ զոհս՝ եւ նուէրս նց՟ : 17 * Յաւուրն երկրորդի զուարակս երկոտասան՝ խոյս երկուս . գառինս տարեւորս անարատս չորեքտասան : 18 * Եւ զոհք նց՟՝ եւ նուէրք զուարակին, եւ խոյին, եւ գառանցն՝ ըստ թուոյ նոցա՝ եւ ը՟ պայմանի իւրեանց : 19 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզսն . եւ զզոհս նոցա . եւ զնուէրս իւրեանց : 20 * Եւ յաւուրն երրորդի՝ զուարակս մետասան . եւ խոյս երկուս . գառինս տարեւորս անարատս չորեքտասան : 21 * Եւ զոհ նց՟ եւ նուէր զուարակացն, եւ խոյոցն, եւ գառանց, ըստ թուոյ նոցա եւ ը՟ պայմանի իւրեանց : 22 * Եւ քօշ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզս նց՟ . եւ զնուէրս իւրեանց : 23 * Եւ յաւուրն չորրորդի զուարակս տասն՝ խոյս երկուս . գառինս տարեւորս անարատս չորեքտասան : 24 * Եւ զոհք նոցա եւ նուէրք զուարակացն, եւ խոյոցն, եւ գառանց, ըստ թուոյ նց՟ եւ ըստ պայմանի իւրեանց : 25 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզսն . եւ զզոհս նոցա . եւ զնուէրս իւրեանց : 26 * Եւ յաւուրն հինգերորդի . զուարակս ինն . խոյս երկուս՝ որոջս տարեւորս անարատս չորեքտասան : 27 * Եւ զոհք նոցա եւ նուէրք զուարակացն, եւ խոյոց, եւ գառանց, ըստ թուոյ նոցա . եւ ըստ պայմանի իւրեանց : 28 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզսն . եւ զզոհս նց՟ եւ զնուէրս իւրեանց : 29 * Եւ յաւուրն վեցերորդի զուարակս ութ . խոյս երկուս . գառինս տարեւորս անարատս չորեքտասան : 30 * Եւ զոհք նոցա եւ նուէրք զուարակացն՝ եւ խոյոց, եւ գառանց, ըստ թուոյ նոցա . եւ ըստ պայմանի իւրեանց : 31 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզսն . եւ զզոհս նոցա . եւ զնուէրս իւրեանց : 32 * Եւ յաւուրն եօթներորդի զուարակս եօթն . խոյս երկուս . գառինս տարեւորս անարատս չորեքտասան : 33 * Եւ զոհք նոցա եւ նուէրք զուարակացն, եւ խոյոց, եւ գառանց, ըստ թուոյ նոցա . եւ ըստ պայմանի իւրեանց : 34 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզսն՝ եւ զզոհս նոցա՝ եւ զնուէրս իւրեանց : 35 * Եւ յաւուրն ութերորդի ելք լիցին ձեզ . զամ՟ գործ սպասաւորութե մի՛ գործիցէք ՚ի նմա : 36 * Եւ մատուսջիք ողջակէզս ՚ի հոտ անուշից ընծայս Տն՟՝ զուարակ մի . խոյ մի . գառինս տարեւորս անարատս եօթն : 37 * Եւ զոհք նոցա եւ նուէրք զուարակին, եւ խոյի, եւ գառանց : ըստ թուոյ նոցա՝ եւ ըստ պայմանի իւրեանց : 38 * Եւ նոխազ մի յայծեաց վասն մեղաց . թող զհանապազորդ ողջակէզսն՝ եւ զզոհս նոցա . եւ զնուէրս իւրեանց : 39 * Զայս առնիցէք ՚ի տօնս ձեր Տն՟ թող զուխտսն ձեր . եւ զողջակէզսն ձեր . եւ զկամայականսն ձեր՝ եւ զզոհսն ձեր՝ զնուէրսն ձեր . եւ զփրկութիւնս ձեր :

## ԳԼ : Լ :

1 Եւ խօսեցաւ Մովսէս ընդ որդիսն Իղի՝ որպէս պատուիրեաց Տր՟ Մովսեսի : 2 * Եւ խօսեցաւ Մովսէս ընդ իշխանս որդւոցն Իղի՝ եւ ասէ . այս բան է՝ զոր հրամայեաց Տր՟ : 3 * Այր որ . այր եթէ ուխտիցէ ուխտ Տն՟ կամ երդնուցու երդումն սահմանաւ . կամ սահմանիցէ ինչ վասն անձին իւրոյ, մի՛ արասցէ ապախտ զբան իւր . այլ զամենայն ինչ՝ որ ելանիցէ ՚ի բերանոյ իւրմէ՝ արասցէ : 4 * Եւ եթէ կին ոք ուխտիցէ ուխտ Տն՟ կամ սահմանիցէ սահմանս ինչ ՚ի տան հօր իւրոյ ՚ի մանկութե իւրում : 5 * Եւ լուիցէ հայր նորա զուխտս նորա՝ եւ զսահմանս նր՟,

զոր

զոր սահմանեաց զանձնէ իւրմէ . և լուեսցէ նմա հայր նորա, կացցեն ամ ուխտք նորա . և ամենայն սահմանքն՝ զոր սահմանեաց զանձնէ իւրմէ՝ հաստատեսցին նմա ։ 6 * Եւ եթէ ոչ առնուցու յանձն հայր նր՝ յաւուր յորում լուիցէ զամենայն ուխտսն նր, և զսահմանսն զոր սահմանեաց զանձնէ իւրմէ, մի կացցեն . և Տէր անպարտ արասցէ զնա՝ զի ոչ էառ յանձն հայր նր ։ 7 * Ապա թէ լինելով լինիցի առն, և ուխտք իւր 'ի նմա իցեն՝ ըստ ուխտելոյ շրթանց իւրոց, զոր սահմանեաց զանձնէ իւրմէ ։ 8 * Եւ լուիցէ այրն նր, և լռիցէ նմա յաւուրն յորում լուիցէ՝ այնպէս կացցեն ամենայն ուխտք նորա՝ և սահմանք նորա՝ զորս սահմանեաց զանձնէ իւրմէ (հաստատեսցին)։ 9 * Ապա թէ ոչ առնուցու յանձն այր նորա՝ յաւուր յորում լուիցի ամ ուխտքն նր, և ամ սահմանքն՝ զոր սահմանեաց զանձնէ իւրմէ՝ մի հաստատեսցին. զի այրն ոչ էառ յանձն. և Տր անպարտ արասցէ զնա ։ 10 * Եւ ուխտք այրւոյ՝ կամ հանեցելոյ, զոր ուխտիցէ զանձնէ իւրմէ. հաստատեսցին նմա ։ 11 * Ապա թէ 'ի տան առն իւրոյ իցեն ուխտք նր, կամ սահմանն՝ զոր սահմանիցէ երդմամբ զանձնէ իւրմէ ։ 12 * Եւ լուիցէ այր նր և լռիցէ նմա, և առնուցու նմա յանձն, կացցեն ամենայն ուխտք նր՝ և ամենայն սահմանք նորա՝ զորս սահմանեաց զանձնէ իւրմէ՝ հաստատեսցին նմա ։ 13 * Եւ եթէ խափանելով խափանեսցէ այր նորա՝ յորում աւուր լուիցէ զամենայն ինչ՝ որ ելանիցէ 'ի շրթանց նորա՝ ըստ ուխտից նորա՝ և ըստ սահմանացն նորա զանձնէ իւրմէ, մի հաստատեսցի նմա. զի այր նորա զանցոյց. և Տր անպարտ արասցէ զնա։ 14 * Զամենայն ուխտ՝ և զամենայն երդումն կապոյ առ ՚ի չարչարելոյ զանձն, այր նորա հաստատեսցէ նմա. և այր նորա զանցուսցէ ։ 15 * Եւ եթէ լռելով լռեսցէ նմա. օրըստօրէ հաստատեսցէ նմա զամենայն ուխտսն իւր . և զսահմանս կացուսցէ նմա. վասն զի լռեաց նմա՝ յաւուրն յորում լուաւ։ 16 * Եւ եթէ զանցուցանելով զանցուսցէ այր նորա յետ աւուրն՝ յորում լուաւ, ընկալցի զմեղս իւր։ 17 * Այս իրաւունք են՝ զոր պատուիրեաց Տէր Մովսէսի. ընդ այր և ընդ կին իւր. ընդ հայր և ընդ դուստր իւր 'ի մանկութեան 'ի տան հօր իւրոյ։

ԳԼ. ԼԱ.

1 Եւ խօսեցաւ Տր ընդ Մովսէսի՝ և ասէ ։ 2 * Առ զվրէժ որդւոցդ Իսրայէլի 'ի Մադիանացւոցն. և ապա յաւելցիս 'ի ժողովուրդ քո ։ 3 * Եւ խօսեցաւ Մովսէս ընդ ժողովրդեանն՝ և ասէ . վառեցէք 'ի ձէնջ արս՝ ճակատել առաջի Տն 'ի վերայ Մադիամու . հատուցանել զվրէժ 'ի Տէ Մադիամու ։ 4 * Հազար այր 'ի ցեղէ՝ յամ ցեղիցն Իսրայէլի . առաքեցէք տալ պատերազմ։ 5 * Եւ համարեցան 'ի հազարաւորացն Իսրայէլի հազար այր 'ի ցեղէ. երկոտասան հազար վառեալ 'ի պատերազմ։ 6 * Եւ արձակեաց զնոսա Մովսէս . հազար այր 'ի ցեղէ հանդերձ զօրու իւրեանց. և զՓենէէս որդի Եղիազարու որդւոյ Ահարոնի քահանայի. և զսպասն սրբութեան. և փողքն ազդեցութեան 'ի ձեռս նոցա ։ 7 * Եւ ճակատեցան ընդդէմ Մադիանացւոցն . որպէս հրամայեաց Տր Մովսէսի. և կոտորեցին զամ արու ։ 8 * Եւ զթագաւորսն Մադիանացւոց կոտորեցին հանդերձ վիրաւորօք նոցա . և զԵւին. և զՍուր . և զՌոկոմ. և զՈւր . և զՌոբոք . զհինգ թագաւորս Մադիամու . և զԲաղաամ որդի Բէովրայ սպանին սրով հանդերձ վիրաւորօք նց ։ 9 * Եւ զկանայս Մադիամու՝ և զաղխն նց, և զամ անասուն նց, և զամ ստացուածս նոցա, և զզօրս նց առին յաւարի։ 10 * Եւ զամ զքաղաքս նոցա տամբք իւրեանց և զաւանս նց հրձիգ արարին ։ 11 * Եւ առին զամենայն զաւար նոցա . զամենայն կապուտ նց 'ի մարդոյ մինչև յանասուն։ 12 * Եւ ածին առ Մովսէս՝ և առ Եղիազար քահանայ. և առ ամ որդիսն Իսրայէլի. զգերին և զկապուտ և զաւար բանա կին յԱռաբովթ Մովաբ ‖ որ է յանդիման Երիքովի առ եզերբ Յորդանանու ։ 13 * Եւ ելին Մովսէս՝ և Եղիազար քահանայ՝ և ամ իշխանք ժողովրդեանն Է առաջ նոցա արտաքոյ բանակին։ 14 * Եւ բարկացաւ Մովսէս 'ի վերայ տեսչանաց զօրուն՝ հազարապետաց . և հարիւրապետաց, եկելոց 'ի ճակատ պատերազմին ։ 15 * Եւ ասէ ցնոսա Մովսէս . ընդէր ապրեցուցէք զամ էգ։ 16 * ‖ Զի նոքա էին որդւոցն Իսրայէլի՝ ըստ բանիցն Բաղաամու՝ առ 'ի վրիպեցուցանելոյ և արհամարհելոյ զբանն Տն վս Փոգովրայ եղև հարուած 'ի ժողովրդեանն Տն ։ 17 * ‖ Եւ արդ՝ կոտորեցէք զամենայն արու յամ աղխիդ . և զամենայն կին՝ որոյ գիտացեալ է զզօրութիւն արուի՝ կոտորեցէք։

* Եւ

‖ Վեր. 25.17.

‖ Յեսու 13.21.

‖ Վեր. 25.18.

‖ Դատ. 21.11.

18 *Եւ զամենայն զաղխ կանանց՝ որ ոչ իցէ գիտացեալ զզօրութիւն արուի՝ ապրեցուցէք ։ 19 *Եւ դուք բանակեցարո՛ւք արտաքոյ բանակին զեւթն օր՝ ամենայնի որոյ սպանեալ իցէ և մերձեցեալ 'ի վիրաւոր . սրբեսցի յաւուրն երրորդի . և յաւուրն եւթներորդի . դուք և գերիքդ ձեր ։ 20 *Եւ զամ հանդերձ, և զամ անօթ մաշկեղէն, և ամենայն գործ մազագործ . և զամ կահ փայտակերտ սրբեսջի՛ք ։ 21 *Եւ ասէ եղիազար քահանայ ցարս զօրուն եկելոց 'ի ճակատէ . այս իրաւունք օրինի են ‖ զոր հրամայեաց Տր մովսէսի ։ 22 *Բաց յոսկւոյ . և յարծաթոյ . և 'ի պղնձոյ . և յերկաթոյ . և 'ի կապարոյ . և յանագէ ։ 23 *Ամենայն որ անցանիցէ ընդ հուր՝ հրով և սրբեսցի . այլ ջրովն սրսկման սրբեսցի ամ՝ որ ոչ անցանիցէ ընդ հուր ։ և լուանայցի ջրով ։ 24 *Լուասջի՛ք զհանդերձս յաւուրն եւթներորդի՝ և սուրբ լինիջիք . և ապա մտանիցէք 'ի բանակն ։ 25 *Եւ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի՝ և ասէ ։ 26 *Ա՛ռ զհամար աւարի գերութեդ 'ի մարդոյ մինչև յանասուն . դու և եղիազար քահանայ . և իշխանք նահապետաց ժողովրդեանդ ։ 27 *Եւ բաժանեցէք զաւարդ 'ի մէջ պատերազմողացդ ելելոցդ 'ի պատերազմ . և 'ի մէջ ամ ժողովրդեանդ ։ 28 *Եւ առջի՛ք զհաս Տն յամենայն արանց պատերազմողաց ելելոց 'ի պատերազմ . ոգի մի 'ի հինգ հարիւրոց՝ 'ի մարդոյ՝ և յանասնոյ . և յարջառոյ՝ և յոչխարէ՝ և յայծեաց ։ 29 *Եւ զկէսն նց առնուցուս՝ և տացես եղիազարու քահանայի ըզ պտուղսն Տն ։ 30 *Եւ 'ի կիսոյ որդւոցն իլի առցես մի 'ի յիսնէ . 'ի մարդոյ՝ և յանասնոյ , յարջառոյ՝ և յոչխարէ՝ և յիշոյ . և յամ անասնոյ . և տացես զայն ղևտացւոցն՝ որք պահիցեն զպահպանութիս խորանին Տն ։ 31 *Եւ արարին մովսէս և եղիազար քահանայ՝ ոնց հրամայեաց Տր մովսէսի ։ 32 *Եւ եղև աւելորդ աւարին՝ զոր ածին յաւարի արքն պատերազմօղք ։ յոչխարաց վեցհարիւրհազար՝ և եւթանասուն և հինգ հազար ։ 33 *Եւ արջառք եւթանասուն և երկու հազարք ։ 34 *Իշք՝ վաթսուն և մի հազար ։ 35 *Եւ ոգիք մարդկան՝ 'ի կանանցն որք ոչ գիտէին զարութի առն, ամ ոգիք երեսուն և երկու հազարք ։ 36 *Եւ եղև կէս աւարին երթելոցն 'ի պատերազմ . 'ի թուոյ ոչխարացն՝ երեքհարիւր և երեսուն հազար . և եւթն հազար և հինգ հարիւր ։ 37 *Եւ եղև հասն Տն յոչխարէ . վեցհարիւր

‖Ղեւ. 6.28. և 11. 33. և 15.12

և եւթանասուն և հինգ ։ 38 *Եւ արջառ՝ երեսուն և վեց հազար . և հասն Տն եւթանասուն և երկու ։ 39 *Եւ էշք . երեսուն հազար և հինգ հարիւր ։ և հասն Տն վաթսուն և մի ։ 40 *Եւ ոգիք մարդկան՝ վեշտասան հազար . և հաս 'ի նոցանէ Տն, երեսուն և երկու ոգիք ։ 41 *Եւ ետ մովսէս զհասն Տն՝ զնուէրն Այ եղիազարու քահանայի . որպէս հրաման ետ Տր մովսէսի ։ 42 *Ի հասարակած որդւոցն իլի . զորս բաժանեաց մովսէս արանցն պատերազմողաց ։ 43 *Եւ եղև հասարակած 'ի ժողովրդենէ անտի ։ յոչխարէ , երեքհարիւր և երեսուն հազար . և եւթն հազար և հինգ հարիւր ։ 44 *Եւ արջառ՝ երեսուն և վեց հազար ։ 45 *Եւ էշք՝ երեսուն հազար և հինգ հարիւր ։ 46 *Եւ ոգիք մարդկան . վեշտասան հազար ։ 47 *Եւ էառ մովսէս 'ի հասարակածէ որդւոցն իսրայելի . մի յիսնէ՝ 'ի մարդոյ և յանասնոյ . և ետ զայն ղևտացւոցն՝ որք պահէին զպահպանութի խորանին Տն . որպէս հրաման ետ Տր մովսէսի ։ 48 *Եւ մատեան առ մովսէս ամ վերակացուք հազարապետութե զօրուն՝ հազարապետք՝ և հարիւրապետք ։ 49 *Եւ ասեն ցմովսէս ։ ծառայք քո կալան զհամար արանց պատերազմողաց առ 'ի մէնջ . և ոչ ծախեցաւ 'ի նոցանէ և ոչ մի ։ 50 *Եւ բերաք մատուցանել ընծայ Տն ։ այր՝ որոյ գտանիցի ոսկի մե հևանդ . կամ ապարանջանք . և մատանի . և կշտապանակ . և փողոշուկ ընդելուզեալ . քաւել վասն մեր առաջի Տն ։ 51 *Եւ առին մովսէս և եղիազար քահանայ զոսկին 'ի նոցանէ . զամ անօթ գործեալ ։ 52 *Եւ եղև ամենայն ոսկի հասին՝ զոր հանին Տն . վեշտասան հազար և եւթն հարիւր և յիսուն սիկղ՝ 'ի հազարապետաց անտի ։ 53 *Եւ արք պատերազմօղք՝ որք ածին աւար իւրաքանչիւր ումեք ։ 54 *Եւ առին մովսէս և եղիազար քահանայ զոսկին ։ 'ի հազարապետաց անտի և 'ի հարիւրապետաց . և տարան 'ի խորանն վկայութե . յիշատակ առ 'ի յորդւոցն իսրայելի առաջի Տն ։

## Գլ։ ԼԲ։

1 Եւ անասուն բազում էր (որդւոցն իսրայելի), որդւոցն ռուբենի . և որդւոցն գադայ զեղեալ յոյժ ։ և տեսին զերկիրն յազերայ . և զերկիրն գաղաադու . և էր տեղին՝ տեղի խաշանց ։ 2 *Եւ մատուցեալ որդիքն ռուբենի՝ և որդիքն գադայ՝ ասեն ցմովսէս և ցեղիազար քահանայ . և ցիշխանս ժողո-

վր-

ղովրդեանն։ 3 *Ատարովթ. եւ Դեբոն. եւ Յազեր. եւ Նեմրա. եւ Եսեբոն. եւ Եղէաղէթ. եւ Սեբեմա. եւ Նաբաւ. եւ Բէան։ 4 *Երկիրն, զոր մատնեաց Տր̃ առաջի որդւոցն Իղի, երկիր անասնասնոյց է. եւ ծառայից քոց խաշինք են։ 5 *Եւ ասեն. եթէ գտաք շնորհս առաջի քո. տացի երկիրն այն ծառայից քոց 'ի կալուած. եւ մի՛ անցուցաներ զմեզ ընդ Յորդանան։ 6 *Եւ ասէ Մովսէս ցորդիսն Գադայ եւ ցորդիսն Ռուբենի։ եղբարք ձեր երթայցեն 'ի պատերազմ. եւ դուք նստիցիք աստ։ 7 *Եւ ընդէ՞ր խոտորեցուցանէք զմիտս որդւոցն Իղի չանցանել յերկիրն՝ զոր Տէր տալոց է նոցա։ 8 *Ոչ այդպէս արարին հարքն ձեր՝ յորժամ առաքեցի զնոսա 'ի Կադէսբառնեայ դիտել զերկիրն։

‖ Մէր. 13.24.

9 *‖Եւ ելին 'ի ձորն ողկուզի. եւ դիտեցին զերկիրն. եւ զանգիտեցուցին զմիտս որդւոցն Իսրայելի, զի մի՛ մտանիցեն յերկիրն՝ զոր ետ նոցա Տէր։ 10 *Եւ բարկացաւ սրտմտութբ̃ Տէր յաւուր յայնմիկ. եւ երդուաւ՝ եւ ասէ։ 11 *‖Ոչ տեսցեն արք՝ որք ելին յեգիպտոսէ՝ 'ի քսանամենից եւ 'ի վեր. որք գիտիցեն զչար եւ զբարի զերկիրն՝ զոր երդուայ տալ Աբրահամու՝ եւ Իսահակայ՝ եւ Յակոբայ. զի ո՛չ եկին զհետ իմ։ 12 *Բայց Քաղեբ որդի Յեփոնեայ զատուցեալն. եւ Յեսու որդի Նաւեայ՝ զի եկին զհետ Տն̃։ 13 *Եւ բարկացաւ սրտմտութբ̃ Տր̃ 'ի վերայ Իղի. եւ յածեցոյց զնոսա յանապատին ամս քառասուն. մինչեւ սատակեցաւ ա̃մ ազգն՝ որք արարին զչարիս առաջի Տն̃։ 14 *Եւ արդ դուք յարուցեալ էք փոխանակ հարցն ձերոց. ժողովք մարդկան մեղաւորաց. յաւելուլ միւսանգամ 'ի սրտմտութի̃ բարկութե̃ Տն̃ 'ի վե̃ր Իսրայելի։ 15 *Զի դարձեալ էք 'ի նմանէ. յաւելուլ՝ միւսանգամ լքանել նմա զձեզ յանապատ. եւ անօրինիք յա̃մ ժողովուրդս յայս։ 16 *Եւ մատեան առաջի նր̃՝ եւ ասեն։ դաւարս ոչխարաց մերոց շինեսցուք՝ եւ անասնոց մերոց. եւ քաղաքս աղխից մերոց։ 17 *Եւ մեք վառիցուք առաջի Տն̃ առաջապահք երթիցուք որդւոցն Իղի. մինչեւ հանցուք զնոսա յիւրաքանչիւր տեղի։ եւ բնակեսցի աղխն մեր 'ի քաղաքս պարսպաւորս վասն բնակչաց երկրիս։ 18 *Եւ ո՛չ դարձցուք 'ի տունս մեր՝ մինչեւ բաժանեսցեն որդիքն Իղի զիւրաքանչիւր ժառանգութի։ 19 *Եւ ո՛չ եւս ժառանգեսցուք 'ի միջի նոցա յայնկոյս Յորդանանու՝ եւ անդր. զի ունիմք զվիճակս մեր յայս կոյս Յոր-

ե

դանանու յարեւելից։ 20 *Եւ ասէ ցնոսա Մովսէս։ ‖Եթէ առնիցէք ըստ բանիդ ըստ այդմիկ. եթէ վառիցիք առաջի Տն̃ 'ի պատերազմ։ 21 *Եւ անցցէ ձեր ա̃մ վառեալ ընդ Յորդանան առաջի Տն̃՝ մինչեւ սատակիցի թշնամին նր̃ առաջի նորա։ 22 *Եւ նուաճեսցի երկիրն առաջի Տն̃. եւ ապա դառնայցէք, քաւեալ լինիջիք առաջի Տն̃ եւ յԻսրայէլէ. եւ եղիցի երկիրս այս ձեզ 'ի կալուած առաջի Տն̃։ 23 *Ապա թէ ո՛չ առնիցէք այդպէս՝ յանցաւոր գտանիցիք առաջի Տն̃. եւ ծանիջիք Տն̃. եւ ծանիջիք զմեղս ձեր՝ յորժամ հասանիցին ձեզ չարիք։ 24 *Եւ շինեսջիք դուք ձեզ քաղաքս աղխին ձերոյ. եւ դաւարս խաշանց ձերոց. եւ որ ինչ ել 'ի բերանոյ ձերմէ՝ առնիցէք։

‖Յեսու. 1.14.

25 *‖Եւ խօսեցան որդիքն Ռուբենի՝ եւ որդիքն Գադայ ընդ Մովսէսի՝ եւ ասեն։ արասցեն ծառայքն քո՝ ոպ̃ հրամայեաց տէրդ մեր։ 26 *Աղխ մեր՝ եւ կանայք մեր՝ եւ ա̃մ անասուն մեր՝ կացցեն 'ի քաղաքս Գաղաադու։ 27 *Եւ ծառայք քո անցցեն վառեալք եւ կազմեալք առաջի Տն̃ 'ի պատերազմ, ոպ̃ եւ տէրդ ասէ։ 28 *Եւ յանձն իմն արար նոցա Մովսէս զԵղիազար քահանայ. եւ զՅեսու որդի Նաւեայ. եւ զիշխանս նահապետաց ցեղիցն Իղի։

‖Յեսու. 4. 12.

29 *Եւ ասէ ցնոսա Մովսէս՝ ‖Եթէ անցցեն որդիքդ Ռուբենի՝ եւ որդիք Գադայ ընդ ձեզ ըստ Յորդանան, ամենայն վառեալ 'ի պատերազմ առաջի Տն̃, եւ տիրիցէք երկրին, տայջիք դոցա զերկիրն Գաղաադու 'ի կալուած։ 30 *Ապա թէ ո՛չ անցցեն ընդ ձեզ վառեալք 'ի պատերազմ առաջի Տն̃, անցուսջիք զաղխ դոցա՝ եւ զանասուն դոցա յառաջագոյն քան զձեզ յերկիրն քանանացւոց. եւ ժառանգեսցեն ընդ ձեզ յերկրին քանանացւոց։ 31 *Պատասխանի ետուն որդիքն Ռուբենի եւ որդիքն Գադայ՝ եւ ասեն. զորինչ ասէ տէրդ ցծառայս իւր՝ արասցուք։ 32 *Մեք անցցուք վառեալք յերկիրն քանանացւոց. եւ տաջիք մեզ կալուածս յայս կոյս Յորդանանու։

‖2. Օրէ. 3.12. Յեսու. 13.8. եւ 22.4.

33 *‖Եւ ետ Մովսէս որդւոցն Գադայ՝ եւ որդւոցն Ռուբենի՝ եւ կիսոյ ցեղին Մանասէի որդւոցն Յովսեփայ՝ զթագաւորութիւն Սեհոնի արքային Ամորհացւոց. եւ զթագաւորութիւն Ովգայ արքային Բասանու. զերկիրն եւ զքաղաքս սահմանօք իւրովք. եւ զքաղաքս երկրին շուրջանակի։ 34 *Եւ շինեցին որդիքն Գադայ զԴեբոն. եւ զԱտարովթ. եւ զԱրոէր։ 35 *Զատրօթ՝ զսովփար. եւ զՅազեր. յօդբէհաւ։ 36 *Եւ բար-

‖2. Օրէ. 3.12. Յեսու. 13.8. եւ 20.8. եւ 22.4.

V ձրա-

ձրացուցին զնոսա․ և զնամրան․ և զբեթառան․ քաղաքս ամուրս․ և գաւիթս հօտից։ 37 *Եւ որդիքն ռուբենի՝ շինեցին զեսեբոն․ և զեղիեղեթ․ և զկարիաթեմ։ 38 *Եւ զնեբօ․ և զբեելմոն․ շուրջ ամրացուցեալս․ և զսեբամայ․ և անուանեցին ըստ անուանց իւրեանց զանունս քաղաքացն՝ զորս շինեցին։

39 *‖Եւ գնացին որդիք մաքիրայ որդւոյ մանասէի ՚ի գաղաադ․ և առին զնա․ և կորուսին զամօրհացին՝ որ բնակեալ էր ՚ի նմա։ 40 *Եւ ետ մովսէս զգաղաադ մաքիրայ որդւոյ մանասէի․ և բնակեցաւ անդ։ 41 *Եւ յայիր մանասեան չոգաւ էառ զքաղաքս նոցա՝ և անուանեաց զնոսա աւանս յայիրայ։ 42 *Եւ նաբաւ գնաց՝ և էառ զկանաթ և զաւանս նորա․ և անուանեաց զնոսա նաբօթ ըստ անուան իւրոյ։

‖ Ծննդ․ 50․22․

## ԳԼ: ԼԳ:

1 Եւ այսոքիկ են բանակետղք որդւոցն իսրայէլի՝ յորժամ ելին յերկրէն եգիպտացւոց համդերձ զօրուն իւրեանց ՚ի ձեռն մովսէսի և ահարոնի։ 2 *Եւ գրեաց մովսէս զչուս նոցա․ և զբանակետղս իւրեանց բանիւ Տեառն։ և այսոքիկ են բանակետղք գնացից նոցա։ 3 * ‖ Չուեցին յռամեսսայ յամսեանն առաջնում․ ՚ի հնգետասաներորդում աւուր ամսոյն առաջնոյ։ զայգոյ զատկին ելին որդիքն իսրայէլի բարձրացեալ ձեռամբ առաջի ամենայն եգիպտացւոց։ 4 *Եւ եգիպտացիքն թաղէին զամենայն մեռեալսն ՚ի նոցանէ․ զորս կոտորեաց Տէր՝ զամենայն անդրանիկս երկրին եգիպտացւոց․ և ՚ի դիս նոցա արար վրէժխնդրութիւն Տէր։ 5 *Եւ չուեալ որդւոցն իսրայէլի յռամեսսայ բանակեցան ՚ի սոկքոթ։ 6 *‖Եւ չուեալ ՚ի սոկքոթայ՝ բանակեցան ՚ի բոթան՝ որ է մասն ինչ անապատին։ 7 *Չուեցին ՚ի բոթանայ․ և բանակեցան առ բերանովն եպիրոթայ․ որ է յանդիման բեեղսեփոնայ։ և բանակեցան հանդէպ մակդողայ։ 8 *Չուեցին հանդէպ եպիրոթայ․ և անցին ընդ մէջ ծովուն յանապատն․ և գնացին նոքա երեքօրեայ ճանապարհ ընդ անապատն․ և բանակեցան զդառն աղբերբքն։ 9 *‖ Չուեցին ՚ի դառն աղբերացն՝ և եկին յէղիմ․ և էին յէղիմ երկոտասան ակն ջրոց․ և եօթանասուն ծառք արմաւենեաց․ և բանակեցան անդ առ ջրովն։ 10 *Չուեցին յէղիմայ․ և բանակեցան զափամբ կարմիր ծովուն։ 11 *‖ Չուեցին ՚ի կարմիր ծովէն․ և բանակեցան յանապատն սին։ 12 *Չուեցին ՚ի սին անապատէն․ և բանակեցան ՚ի հռափայ։ 13 *Չուեցին ՚ի հռափայ․ և բանակեցան յեղիմ։ 14 *Չուեցին յեղիմայ․ ‖ և բանակեցան յռափիդիմ․ և ոչ գոյր ջուր ըմպելոյ ժողովրդեանն։ 15 *Չուեցին յռափիդիմայ․ և բանակեցան յանապատին սինայ։ 16 *Չուեցին յանապատէն ‖ սինայ․ և ‖ բանակեցան ՚ի գերեզմանս ցանկութեան։ 17 * ‖ Չուեցին ՚ի գերեզմանացն ցանկութեան․ և բանակեցան յասերօթ։ 18 *‖ Չուեցին յասերօթայ․ և բանակեցան յաւաթամայ։ 19 *Չուեցին յաւաթամայ․ և բանակեցան յռեմմոնփարէս։ 20 *Չուեցին յռեմմոնփարէսայ․ և բանակեցան ՚ի ղեբոնայ։ 21 *Չուեցին ՚ի ղեբոնայ․ և բանակեցան ՚ի դէսսայ։ 22 *Չուեցին ՚ի դէսսայէ․ և բանակեցան ՚ի մակելլաթ։ 23 *Չուեցին ՚ի մակելլաթայ․ և բանակեցան ՚ի սափար։ 24 *Չուեցին ՚ի սափարայ․ և բանակեցան ՚ի քարադաթ։ 25 *Չուեցին ՚ի քարադաթայ․ և բանակեցան ՚ի մակեղօթ։ 26 *Չուեցին ՚ի մակեղօթայ․ և բանակեցան ՚ի կատաաթ։ 27 *Չուեցին ՚ի կատաաթայ․ և բանակեցան ՚ի կարաաթ։ 28 *Չուեցին ՚ի կարաաթայ․ և բանակեցան ՚ի մատեկայ։ 29 *Չուեցին ՚ի մատեկայ․ և բանակեցան ՚ի սելմոնայ։ 30 *Չուեցին ՚ի սելմոնայ․ և բանակեցան ՚ի մասուրութ։ 31 *Չուեցին ՚ի մասուրութայ․ և բանակեցան ՚ի բանեայ։ 32 *‖ Չուեցին ՚ի բանեայ․ և բանակեցան ՚ի լերինն գադգադ։ 33 *Չուեցին ՚ի լեռնէ անտի գադգադայ․ և բանակեցան յետեբաթայ։ 34 *Չուեցին յետեբաթայ․ և բանակեցան յեբրօն։ 35 *Չուեցին յեբրօնայ․ և բանակեցան ՚ի գասիօնգաբեր։ 36 *‖ Չուեցին ՚ի գասիօնգաբերայ․ և բանակեցան յանապատին ՚ի սին՝ որ է կադէս։ 37 *Չուեցին ՚ի սին անապատէ․ և բանակեցան (յանապատին փարանու՝ այն է կադէս։ չուեցին ՚ի կադէսայ․ և բանակեցան) ՚ի հովր լերինն՝ մերձ առ երկրաւն եդովմայ։ 38 *‖ Եւ ել ահարոն քահանայ ՚ի լեառն հրամանաւ Տեառն և մեռաւ անդ․ ՚ի քառասներորդի ամի ելանելոյ որդւոցն իսրայէլի յերկրէն եգիպտացւոց․ յամսեանն հինգերորդի՝ որ օր մի էր ամսոյն։ 39 *Եւ ահարոն էր հարիւր և քսան և երից ամաց՝ յորժամ մեռաւ ՚ի հովր լերինն։ 40 *Եւ լուաւ քանանէս արքայ արադայ․ և ինքն բնակեալ էր յերկրին քանանացւոց՝ յորժամ մտանէին որդիքն իսրայէլի։ 41 *Չուեցին ՚ի հովր լեռնէ․ և

‖ Ելից․ 12․ 37․ ‖ Ելից․ 13․20․ ‖ Ելից․ 15․27․ ‖ Ելից․ 16․1․

յալուս — յալուսայ

‖ Ելից․ 17․1․ ‖ Ելից․ 19․1․ ‖ Թւ․ 11․ 34․ ‖ Թւ․ 13․1․ ‖ 2․ Օրէ․ 10․7․ ‖ Թւ․ 20․1․ ‖ Թւ․ 20․25․ 2․ Օրէ․ 32․ 50․

42 և բանակեցան 'ի սելմոնայ. * Չուեցին 'ի սելմոնայ. և բանակեցան 'ի փենոն: 43 * Չուեցին 'ի փենոնայ. և բանակեցան յոբովթ: 44 * Չուեցին յոբովթայ. և բանակեցան 'ի գայի. յայնկոյս սահմանացն մովաբու: 45 * Չուեցին 'ի գայեայ. և բանակեցան 'ի դեմոնգադ: 46 * Չուեցին 'ի դեմոնգադայ՝ և բանակեցան 'ի գելմոնդեբլաթեմ: 47 * Չուեցին 'ի գելմոնդեբլաթեմայ. և բանակեցան 'ի սաբարիմ՝ յանդիման նաբաւայ: 48 * Չուեցին 'ի լերանցն նաբաւայ. և բանակեցան յարևմտից մովաբու առ յորդանանաւ յանդիման երիքովի: 49 * Եւ բանակեցան զյորդանանաւ 'ի մէջ եսիմովթայ. մինչև ցմելպատով. յարևմտից մովաբու:

50 * Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի յարևմտից մովաբու առ յորդանանաւ յանդիման երիքովի՝ և ասէ: 51 * Խօսեաց ընդ որդիսն իսրայէլի՝ և ասասցես ցդոսա: դուք ահաւասիկ անցանէք ը̅ յորդանան յերկիրն քանանացւոց: 52 * Եւ կորուսջիք զամ բնակիչս երկրին յերեսաց ձերոց: և կործանեսջիք զդիտանոցս երկրի նց. և զամ կուռս ձուլածոյս նց կորուսջիք. զամ զարձանս նոցա բառնայցէք 'ի միջոյ: 53 * Եւ կորուսջիք զբնակիչս երկրին. և բնակեսջիք դուք 'ի նմա. զի ձեզ ետու զերկիրն նոցա 'ի վիճակ: 54 * Ըստ ցեղից ձերոց՝ ըստ բազմաց բազմացուցանիջիք զկալուածս իւրեանց. և ըստ սակաւուց սակաւացուսջիք զկալուածս իւրեանց: ուր ելանիցէ յանուն ուրուք՝ անդ լինիցի: ըստ ցեղից նահապետութե ձերոյ ժառանգեսջիք: 55 * Եւ եթէ ոչ կորուսանէք զբնակիչս երկրին յերեսաց ձերոց. եղիցին՝ զոր թողուցուք 'ի նոցանէ՝ խայծ յականս ձերում, և նետք 'ի կողս ձեր: և եղիցին ձեզ թշնամիք յերկրին՝ յորում դուք բնակիցիք: 56 * Եւ եղիցի, որպէս խորհէի առնել նոցա՝ արարից ձեզ:

Բ. Օրէ. 7. 5. Դատ. 2. 2.

## ԳԼ. ԼԴ.

1 Եւ խօսեցաւ Տր ընդ մովսէսի՝ և ասէ: 2 * Պատուիրեա որդւոցն իսրայէլի՝ և ասասցես ցնս: դուք մտանէք յերկիրն քանանացւոց. և այն լիցի ձեզ 'ի ժառանգութի. երկիրն քանանու հանդերձ սահմանօք իւրովք: 3 * Եւ եղիցի ձեզ կողմն ընդ հարաւ 'ի սինն անապատէ մինչև մօտ յեդովմ: և եղիցին ձեզ սահմանքն՝ որք ը̅ հարաւ իցեն. 'ի մասնէ աղի ծովուն յարևելից կողմանէ: 4 * Եւ պատիցին սահմանքն ձեր 'ի հարաւոյ՝ ընդ սարն ակրաբինայ. և անցցեն յենակ. և եղիցին ելք նորա ընդ հարաւոյ կողմն կադէսբառնեայ. և ելցեն յաւանն արադայ. և անցցեն յասեմոն: 5 * Եւ պատիցին սահմանքն յասեմոնայ ձորոյն եգիպտացւոց. և եղիցին ելք նր ընդ ծովն: 6 * Եւ սահմանք ծովուն ձեզ լիցին: ծովն մեծ սահման իցէ. այն լիցին ձեզ սահմանք ծովուն: 7 * Եւ այս լիցին ձեզ սահմանք ընդ կողմն հիւսիսոյ. 'ի մեծէ ծովէն չափեսջիք ձեզ զլեառն լեռնային: 8 * Եւ 'ի լեռնէ անտի չափեսջիք զնոյն մինչև 'ի մուտսն եմաթայ. և եղիցին ելքն նր սահմանք արադաքոյ: 9 * Եւ ելանիցէ առ սահմանօքն եփրոնայ. և եղիցին ելք նորա ասերնայիդ. այն լիցին ձեզ սահմանք 'ի հիւսիսոյ: 10 * Եւ չափեսջիք ձեզ սահմանս յարևելից. յասերնայիդայ ցսեփամար: 11 * Եւ իջանիցեն սահմանքն 'ի սեփփամարայ ցբեղայ յարևելից կողմանէ աղբերացն. և իջցեն սահմանքն 'ի բեղայ մինչև ցծովն քեներայ յարևելից կողմանէ: 12 * Եւ իջանիցեն սահմանքն մինչև ցյորդանան: և ելք նր լինիցին ծովն աղի. այն ամ երկիր լինիցի ձեզ. և սահմանք նորա շուրջանակի: 13 * Եւ պատուիրեաց մովսէս որդւոցն իսրայէլի՝ և ասէ. այս է երկիրն՝ զոր ժառանգիցէք վիճակաւ. որպէս հրաման ետ Տր տալ զնա ինն ցեղիցն. 14 և կիսոյ ցեղին մանասէի: * Վասն զի էառ ցեղ որդւոցն ռուբենի. և ցեղ որդւոցն գադայ՝ ըստ տանց նահապետաց իւրեանց. և կիսոյ ցեղին մանասէի զվիճակս իւրեանց: 15 * Երկու ցեղ և կէսն առին 'ի կալուած ինքեանց յայնկոյս յորդանանու յանդիման երիքովի 'ի հարաւոյ ը̅ կողմն արևելից: 16 * Եւ խօսեցաւ Տր ը̅ մովսէսի՝ և ասէ: 17 * Այս անուանք են արանցն՝ որք ժառանգեցուցանիցեն ձեզ զերկիրն: եղիազար քահանայ: և յեսու նաւեան: 18 * Եւ մի մի իշխան 'ի ցեղէ առնուցուք ժառանգեցուցանել ձեզ զերկիրն: 19 * Եւ այսոքիկ անուանք են արանց: ցեղին յուդայ. քաղէբ որդի յեփոնեայ: 20 * Ցեղին շմաւոնի. սաղամիէլ որդի 21 եմիուդայ: * Ցեղին բենիամենի. ել 22 դադ որդի քասղովդայ: * Ցեղին դանայ. իշխան բակքիր որդի եգղայ: 23 * Որդւոցն յովսեփայ: ցեղի որդւոցն մանասէի՝ իշխան անիէլ որդի սուփի 24 դայ: * Ցեղի որդւոցն եփրեմի իշխան 25 կամուէլ որդի սաբաթայ: * Ցեղին զաբուղոնի՝ իշխան եղիսափան որդի 26 փառնակայ: * Ցեղի որդւոցն իսաքարայ՝ իշխան փաղտիէլ որդի ոզիայ:

Յեսու 15. 1.

Յեսու 14. 1. 2.

27 *Յեղէ որդւոցն Ասերայ՝ իշխան Աքի-
ովր որդի Սելոմայ։ 28 *Յեղէն Նեփթա-
ղիմայ՝ իշխան Փադայել որդի Ամիու-
դայ։ 29 *Այքա են՝ որոց հրաման ետ Տր
բաժանել որդւոցն Իսրայելի զեր-
կիրն Քանանացւոց։

## ԳԼ. ԼԵ.

1 Եւ խօսեցաւ Տր ընդ Մովսէսի յարե-
ւմուտս Մովաբու՝ առ եզերբ Յոր-
դանանու՝ յանդիման Երիքովի՝ եւ ասէ։
2 *Հրաման տուր որդւոցն Իսրայելի.
եւ տացեն Ղեւտացւոցն ՚ի վիճակաց կա-
լուածոց իւրեանց քաղաքս բնակու-
թեց. եւ բուրաստանս շուրջ զքաղա-
քօք իւրեանց տացեն Ղեւտացւոցն։
3 *Եւ եղիցին նոցա քաղաքք բնակու-
թե. եւ զատուցեալքն նոցա եղիցին
խաշանց նց. եւ ամ չորքոտանեաց նց։
4 *Եւ արուարձանք քաղաքացն՝ զորս
տայցէք Ղեւտացւոցն ՚ի պարսպէ քա-
ղաքին. եւ արտաքոյ պարսպին երկուս
հազարս կանգունս շուրջանակի։ 5 *Եւ
չափեսջիք արտաքոյ քաղաքին՝ յարեւե-
լից կողմանէ երկուս հազարս կան-
գունս։ եւ ընդ ծովակողմն երկուս հա
զարս կանգունս։ եւ ընդ կողմն հիւսի
սի երկուս հազարս կանգունս եւ ընդ
կողմն հարաւոյ երկուս հազարս կան-
գունս։ եւ քաղաքք ՚ի մէջ այնորիկ լի
նիցի ձեզ։ եւ զարուարձանս քաղա-
6 քացն։ *Եւ զքաղաքսն՝ զորս տայցէք
Ղեւտացւոցն. զվեց քաղաքս ապաստա
նից՝ զորս տայցէք փախչել անդր սպա
նողին։ եւ առ այնու քառասուն եւ եր-
7 կուս քաղաքս։ *Ընդ ամ քաղաքս՝ քա
ռասուն եւ ութ քաղաք տայցէք Ղեւտա
ցւոցն։ եւ զնոսա՝ եւ զբուրաստանս իւր
8 եանց։ *Եւ զքաղաքս՝ զորս տայցէք
՚ի կալուածոց որդւոցն Իղի. ՚ի բազ-
մաց բազում՝ եւ ՚ի սակաւուց սակաւս.
ըստ իւրաքանչիւր ժառանգութե՝ զոր
ժառանգեցին, տացեն ՚ի քաղաքաց
9 անտի Ղեւտացւոցն։ *Եւ խօսեցաւ Տր
10 ընդ Մովսէսի՝ եւ ասէ։ *Խօսեաց ընդ
որդիսն Իղի՝ եւ ասասցես ցնս։ Դուք
անցանիցէք ընդ Յորդանան
11 յերկիրն Քանանացւոց։ *Եւ զատուսջիք ձեզ քաղաքս. որք լինիցին ձեզ
ապաստանաց՝ փախչել անդ սպանո-
ղին։ ամ որ հարկանիցէ զանձն ուրուք
12 ակամայ։ *Եղիցին ձեզ քաղաքք ա-
պաստանի ՚ի մերձաւորէ արեանն. եւ
մի մեռանիցի սպանողն՝ մինչեւ անց-
ցէ առաջի ժողովրդեանն ՚ի դատաս-
13 տանի։ *Եւ քաղաքքն զոր տայցէք՝
վեց քաղաքք ապաստանի լինիցին
14 ձեզ։ *Զերիս քաղաքս տաջիք յայն կոյս
Յորդանանու. եւ երիս քաղաքս տաջիք
15 յերկրին Քանանացւոց։ *Եւ եղիցի
այն ապաւինութի որդւոցն Իսրայելի.
եկին եւ պանդխտի ՚ի միջի ձերում. եւ
եղիցին քաղաքքն այնոքիկ ապաս-
տանք. փախչել անդր ամի որ հարկա
16 նիցէ զանձն ուրուք ակամայ։ *Եւ
եթէ երկաթեղէն անօթով ոք հար-
կանիցէ՝ եւ սպանանիցէ զնա. սպանող
17 է. մահու մեռցի սպանողն։ *Եւ եթէ
բռնաքարաւ, որով մեռանիցի ոք՝
հարկանիցէ զնա՝ եւ մեռանիցի՝ սպա
18 նող է. մահու մեռցի սպանողն։ *Եւ
եթէ փայտեղէն անօթով ՚ի ձեռանէ,
որով մեռանիցի ոք՝ հարկանիցէ զնա
եւ մեռանիցի՝ սպանող է. մահու մեռ-
19 ցի սպանողն։ *Մերձաւոր արեանն
սպանցէ զսպանողն. յորժամ պատա
20 հեսցի նմա սպանցէ։ Եւ եթէ առ
թշնամութե մղեսցէ զնա. եւ ձգեսցէ
նմա զամ անօթ խարդախութբ, եւ
21 մեռանիցի։ *Կամ առ քինու հարկա
նիցէ զնա ձեռամբ իւրով՝ եւ մեռանի
ցի, մահու մեռցի՝ որ եհարն. սպանող
է, մահու մեռցի՝ որ սպանանիցէն.
մերձաւոր արեանն սպանցէ զսպա-
22 նողն ՚ի պատահելն նր նմա։ *Ապա
թէ վրիպակաւ՝ եւ ոչ առ թշնամութե
մղեսցէ զնա՝ եւ ձգեսցէ նմա զամե-
նայն անօթ եւ ոչ խարդախութբ։
23 *Կամ զամ քար՝ որով մեռանիցի՝ եւ ոչ
գիտութբ հարկանիցէ զնա՝ եւ մեռա-
նիցի. եւ նա չէր նորա թշնամի. եւ ոչ
24 խնդրէր չար առնել նմա։ *Դատես-
ցէ ժողովրդն ՚ի մէջ հարկանելեացն՝
եւ ՚ի մէջ մերձաւորի արեանն ըստ դա-
25 տաստանացս այսոցիկ։ *Եւ ապրե-
ցուսցէ ժողովուրդն զսպանողն ՚ի մեր
ձաւորէ արեանն. եւ յուղարկեսցէ զնա
ժողովուրդն անդրէն ՚ի քաղաքն ա-
պաստանի՝ յոր ապաւինեալն էր. եւ
բնակեսցի անդ, մինչեւ մեռանիցի քա
հանայն մեծ՝ զոր օծին իւղովն սրբու
26 թե։ *Եւ եթէ ելանելով ելանիցէ
սպանողն ըստ սահմանս քաղաքին՝ յոր
27 ապաւինեալն էր։ *Եւ գտցէ զնա
մերձաւոր արեանն արտաքոյ սահմա-
նաց քաղաքին ապաստանի իւրոյ,
սպանցէ մերձաւոր արեանն զսպա-
28 նողն. եւ մի լիցի մահապարտ։ *Զի սան
այնորիկ ՚ի քաղաքի ապաւինին իւրոյ
բնակեսցի. մինչեւ մեռանիցի քահա-
նայն մեծ։ եւ յետ մեռանելոյ քահա-
նայի մեծի՝ դարձցի անդրէն սպա-
29 նողն յերկիր կալուածոց իւրոց։ *Եւ
եղիցի այս ձեզ յիրաւունս դատաս-
տանի յազգս ձեր՝ յամ բնակութե ձե
30 րում։ *Ամ որ հարկանիցէ զանձն.
վկայիւք

Margin references:
Յեսու. 21.2.
2. Օրէ. 4.41. Յեսու. 21.3.
2. Օրէ. 19.2. Յեսու. 20.2.
2. Օրէ. 4.41. Յեսու. 20.7. և 8.
2. Օրէ. 19.11.

վկայիւք սպանցէն զսպանողն։ և մի՛, միայն վկայ մի՛ վկայեսցէ սպանանե_լոյ զանձն։ *Եւ մի՛ փրկանս ընդ անձին 31 'ի սպանողէն՝ որ մահապարտ իցէ, մի՛ առնուցուք. այլ մահու մեռանիցի։ *Եւ մի՛ առնուցուք փրկանս վասն 32 փախչելոյ 'ի քաղաքն ապաստանի. առ միւսանգամ բնակելոյ յերկրին, մինչև մեռանիցի քահանայն մեծ։ *Եւ մի՛ 33 շաղախիցէք զերկիրն. և ոչ քաւիցի երկիրն յարենէն հեղլոյ 'ի վ̅ր̅ նորա, եթէ ոչ արեամբ հեղլով։ *Եւ մի՛ 34 պղծիցէք զերկիրն՝ յորում բնակիցէք 'ի նմա. յորում ես բնակեցայց 'ի միջի ձերում. զի ես եմ Տր̅ Ա̅ծ ձեր, որ բնակիմ 'ի մէջ որդւոցդ իսրայէլի։

## Գլ: ԼԶ:

‖ Վեր. 27. 1.

Եւ ‖ մատեան իշխանք ցեղի որդ_ւոցն գաղաադու՝ որդւոյ մաքիրայ՝ որդւոյ մանասէի 'ի ցեղէ որդւոցն յովսեփու. և խօսեցան առաջի մովսէսի. և առաջի եղիազարու քահանայի. և առաջի իշխանաց տանց նահապե_տաց որդւոցն իսրայէլի։ *Եւ ասեն. 2 տեառն մերում հրաման ետ Տէր տալ զերկիրն ժառանգութե̅ վիճակ որդւոցն ի̅ղ̅ի. ‖ և տեառն հրաման ետ Տր̅՝ տալ ժառանգութի̅ դստե_րացն սալպաադու եղբօր մերում։ *Եւ արդ եթէ լինիցին միումցեղիցն 3 ի̅ղ̅ի կանայք. և բառնայցի վիճակ նց̅ 'ի կալուածոց հօրն իւրեանց. և յաւել_ցի 'ի ժառանգութի̅ այնր ցեղի որոց լինիցին կանայք. և 'ի վիճակէ ժա_ռանգութե̅ մերոյ բառնայցի։ *Եւ 4 եթէ լինիցի թողութի̅ որդւոցն ի̅ղ̅ի

‖ Յեսու 17. 4.

յաւելցի ժառանգութի̅ նց̅ 'ի ժառան_գութի̅ ցեղի՝ որոց լինիցին կանայք՝ և 'ի ժառանգութենէ ցեղի ազգին մերոյ 5 բառնայցի ժառանգութի̅ նց̅։ *Եւ պատուիրեաց մովսէս որդւոցն ի̅ղ̅ի հրամանաւ Տն̅՝ և ասէ. առ այն զոր ասաց ցնա ցեղ որդւոցն յովսեփայ։ 6 *Այս բանն՝ զոր հրաման ետ Տէր դստերացն սալպաադու՝ և ասէ.‖ որոց հաճոյ թուեսցի յաչս նց̅ եղիցին նոցա կանայք. բայց 'ի ցեղէ հօր իւրեանց 7 եղիցին կանայք։ *Եւ մի՛ փոխեսցի ժառանգութի̅ որդւոցն ի̅ղ̅ի 'ի ցեղէ 'ի ցեղ. զի յիւրաքանչիւր ժառանգու_թի̅ հայրենի ցեղի իւրոյ յարեսցին որ 8 դիքն ի̅ղ̅ի։ *Եւ ա̅մ՝ օրիորդ մերձաւոր ժառանգութե̅ 'ի ցեղից որդւոցն ի̅ղ̅ի միում'ումեք յազգականէ հօր իւրոյ լինիցի կին. զի մերձաւորեսցուսցեն որդիքն իսրայէլի զիւրաքանչիւր հայ 9 րենի ժառանգութի̅ իւր։ *Եւ մի՛ փո_խեսցի վիճակ 'ի ցեղէ յայլ ցեղ. այլ իւրաքանչիւր յիւր ժառանգութի̅ յա 10 րեսցին որդիքն իսրայէլի։ *Եւ որպէս հրաման ետ Տր̅ մովսէսի՝ այնպէս արա 11 րին դստերքն սալպաադու։ *Եւ ե_ղեն թերսա. և եգղա. և մեղքա. և նուա. և մաղա. դստերքն սալպաա_դու՝ հօր եղբարց որդւոյ իւրեանց կա 12 նայք։ *Ի ցեղէն մանասէի որդւոցն յովսեփայ եղեն կանայք. և եղեն ժա_ռանգութիք նց̅ յազգատոհմի հօրն 13 իւրեանց։ *Այսքիկ են պատուի_րանք՝ և իրաւունք՝ և դատաստանք՝ զորս պատուիրեաց Տր̅ 'ի ձեռն մովսէ_սի. յարևմուտս մովաբու առեզերբ յոր դանանու. յանդիման երիքովի։

‖ Տոբ. 7. 13.



Դէմ յանդիման խօսեցաւ Տէր ընդ ձեզ 'ի միջոյ հրոյն․ և ես կայի 'ի մէջ Տն և ձեր․ Երկ․ Օրինաց․5․5․



Նա՛ գրեաց զնոսա 'ի վերայ երկուց քարեղէն տախտակաց, և ետ ցիս․ Երկ․ Օրինաց․5․22․

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ ՕՐԻՆԱՑ՝

## ՈՐ ԱՍԻ ԲԱՑ ԵԲՐԱՅԵՑԻՈՑՆ ԷԼԼԷ ՀԱԴԴԷԲԱՐԻՄ․

Գլուխ Առաջներորդ ։



ԱՅՍ ԵՆ ՊԱՏԳԱՄՔ՝ զորս խօսեցաւ մովսէս ընդ ամ̄ իղի յայնկոյս յորդանանու յանապատին յարևմուտս՝ մերձ 'ի ծովն կարմիր․ 'ի մէջ փառան՝ տոփողայ․ և ղոբանայ՝ և ասերօթայ․ և հանգրուճանացն ոսկեկայ ։ 2 * Մետասանօրեայ ճանապարհ 'ի քորեբայ ցլեառն սէիր՝ մինչև ցկադէսբառնեայ։ 3 *Եւ եղև 'ի քառասներորդում ամի, յամսեանն մետասաներորդում, որ օր մի էր ամսոյն․ խօսեցաւ մովսէս ը̄ ամենայն որդիսն իղի․ ըստ ամ̄ի ոչ̄ պատուիրեաց նմա Տէր առ նոսա ։

4 *‖ Յետ հարկանելոյ զսեհոն արքայ ամորհացւոց զբնակեալն յեսեբոն․ և զովգ արքայ բասանու զբնակեալն յաստարովթ և յեդրային ։ 5 * Յայնկոյս յորդանանու յերկրին մովաբու՝ սկսաւ մովսէս մեկնել զօրէնս զայսոսիկ՝ և ասէ․ 6 * Տր Ա՛ծ մեր խօսեցաւ ընդ մեզ 'ի քորեբ՝ և ասէ՝ շատ լիցի բնակելդ 'ի լերինս յայսմ ։ 7 * Դարձարուք՝ և չուեցէք դուք աստի․ և մտանիցէք 'ի լեառնն ամորհացւոց․ և առ ամենեսին որք շուրջ բնակեալ իցեն զարաբացւովք 'ի լերինս և 'ի դաշտս․ ընդ հարաւ և ընդ ծովեզրն քանանացւոց՝ և յանկերն լիբանանու․ մինչև ցգետն մեծ, ցգետն եփրատ ։ 8 * Տեսէք՝ զի ահա մատնեցի առաջի ձեր զերկիրն ։ մտէք՝ և ժառանգեցէք զերկիրն՝ զոր երդուայ ես հարցն ձերոց

‖ Թուոց 21․24

րոց աբրահամու՝ և իսահակայ՝ և յակոբայ. տալ նոցա և զաւակի նոցա զերկիրն՝ որ բղխէ զկաթն և զմեղր: [9] *Եւ խօսեցայ ընդ ձեզ 'ի ժամանակին յայնմիկ՝ և ասեմ: [10] *Ոչ կարեմ միայն հանդարտիլ ձեզ. Տր Ած մեր բազմացոյց զձեզ. և ահաւադիկ էք դուք այսօր իբրև զաստեղս երկնից բազմութեամբ: [11] *Տր Ած հարցն մերոց յաւելցէ 'ի ձեզ եւս քան որչափ էքդ՝ հազարապատիկ. և օրհնեսցէ զձեզ՝ որպէս և խօսեցաւ ընդ ձեզ: [12] *Եւ զիարդ կարիցեմ միայն կրել զաշխատութիւս ձեր՝ և զաղխս ձեր՝ և զհակառակութիւս ձեր: [13] *Արդ տուք 'ի ձէնջ զարս իմաստունս, և խորհրդականս՝ և հանճարեղս 'ի ցեղից ձերոց. և կացուցից 'ի վերայ ձեր իշխանս ձեզ: [14] *Եւ պատասխանի տուեալ ասացէք ցիս. բարւոք է բանդ՝ զոր խօսեցար առնել: [15] *Եւ առի 'ի ձէնջ զցեղապետսն, արս իմաստունս և հանճարեղս. և խորհրդականս. և կացուցի զնոսա 'ի վերայ ձեր՝ առաջնորդս. հազարապետս. և հարիւրապետս. և յիսնապետս. և տասնապետս. և ատենադպիրս դատաւորացն ձերոց: [16] *Եւ պատուիրեցի դատաւորացն ձերոց 'ի ժամանակին յայնմիկ՝ և ասեմ: լուարուք ատենի 'ի մէջ եղբարց ձերոց. և դատեցարուք արդարութեամբ 'ի մէջ առն և եղբօր իւրոյ. և 'ի մէջ եկին իւրոյ: [17] *Եւ մի առնուցուս ակն 'ի դատաստանի. ըստ փոքուն և ըստ մեծին դատիցես. և մի խորշիցիս յերեսաց մարդոյ. զի դատաստանն Այ է. և բան ինչ՝ որ ծանրագոյն քան զձեզ իցէ՝ հասուսջիք առ իս՝ և լուայց: [18] *Եւ պատուիրեցի ձեզ 'ի ժամանակին յայնմիկ զամ բանս՝ զոր առնիցէք: [19] *Եւ չուեալ 'ի քորեբայ շրջեցաք ընդ ամ անապատն ընդ մեծ և ընդ ահագին, զոր դուք իսկ տեսիք. զճանապարհ լերին ամորհացւոց՝ որպէս պատուիրեաց Տէր Ած մեր մեզ. և եկաք մինչև ցկադէսբառնեայ: [20] *Եւ ասացի ցձեզ. եկայք մինչև ցլեառն ամորհացւոց՝ զոր Տր Ած մեր տացէ ձեզ: [21] *Տեսէք՝ զի Տր Ած մեր մատնեաց առաջի երեսաց ձերոց զերկիրն՝ ելէք և ժառանգեցէք՝ որպէս ասաց Տր Ած հարց մերոց ձեզ. մի երկնչիցիք՝ և մի զանգիտիցէք: [22] *Եւ մատեայք առ իս ամենեքեան՝ և ասացիք. առաքեսցուք յառաջագոյն քան զմեզ արս. և դիտեսցեն մեզ զերկիրն. և պատմեսցեն մեզ զհանգամանս ճանապարհին ընդ որ ելանիցեմք անդր. և զքաղաքացն յորս մտանիցեմք:

Ելից. 8.18.
Յօհ. 7.24.
Ղևտ. 19.15.
Այր. 16.19.
Առակ. 24.23.
Սէրաք. 42.1.
Յակօբ. 2.1.
Թուոց 13.3.

[23] *Եւ հաճոյ թուեցաւ առաջի իմ բանն. և առի 'ի ձէնջ երկոտասան այր՝ այր մի ըստ ցեղի: [24] *Եւ գնացին ելին 'ի լեառն. և հասին մինչև 'ի ձորն ողկուզի. և լրտեսեցին զնա: [25] *Եւ առին 'ի ձեռս իւրեանց 'ի պտղոյ երկրին. և իջին առ մեզ՝ և բերին մեզ զրոյց՝ ասեն, բարի է երկիրն՝ [26] զոր Տր Ած տալոց է մեզ: *Եւ ոչ կամեցայք ելանել. և հեստեցիք բանին Տն Այ մերոյ: [27] *Եւ տրտնջեցիք 'ի վրանս ձեր և ասացիք՝ առ ատելութե Տն էհան զմեզ յերկրէն եգիպտացւոց՝ մատնել զմեզ 'ի ձեռս ամորհացւոց՝ և սատակել զմեզ: [28] *Արդ յո՞ ելանիցեմք. և եղբարք ձեր զանգիտեցուցին զսիրտս ձեր՝ և ասեն. ազգ մեծ և բազում և զօրագոյն է քան զմեզ՝ և քաղաքք մեծամեծք և պարսպաւորք մինչև յերկինս. այլ և որդիս [29] սկայից տեսաք մեք անդ: *Եւ ասացի ցձեզ՝ մի զանգիտիցէք՝ և մի զարհուրիցիք 'ի նոցանէ: [30] *Տր Ած մեր՝ որ երթայ առաջի երեսաց ձերոց, նա տայ պատերազմ ընդ նոսա փոխանակ ձեր. ըստ ամի զոր արար ձեզ յերկրին եգիպտացւոց առաջի աչաց ձերոց: [31] *Եւ յանապատիս յայսմիկ՝ զոր տեսիք՝ զի սնոյց զքեզ Տր Ած քո, որպէս սնուցանիցէ ոք զորդի իւր. ըստ ամ ճանապարհին զոր գնացիք՝ մինչև եկիք 'ի տեղիս յայս: [32] *Եւ 'ի բանիս յայսմիկ ոչ հաւատացիք Տն Այ ձերոյ: [33] *Որ երթայ առաջի ձեր 'ի ճանապարհի. ընտրել ձեզ զտեղին. առաջնորդել ձեզ հրով 'ի գիշերի՝ ցուցանել ձեզ զճանապարհ ընդ որ գնայցէք. և ամպով 'ի տուէ: [34] *Եւ լուաւ Ած զձայն բանիցն ձերոց. և բարկացեալ երդուաւ՝ և ասէ: [35] *Թէ տեսանիցէ ոք յարանցդ յայդցանէ զերկիրն բարի՝ զոր երդուայ տալ հարցն նոցա: [36] *Բայց քաղէբ որդի յեփոնեայ, նա տեսցէ զնա: և նմա տաց զերկիրն յոր եհաս, և որդւոց նր. վն յարելոյ նր 'ի Տր: [37] *Եւ ինձ բարկացաւ Ած վն ձեր՝ և ասէ. և դու մի մտցես անդր: [38] *Այլ յեսու որդի նաւեայ սպասաւոր քո. նա մտցէ անդր. զնա զօրացո. զի նա ժառանգեցուսցէ զնա իսրայէլի: [39] *Եւ ծնունդք և որդիք ձեր՝ զորոց ասացիք թէ 'ի յափշտակութի լինիցին՝ և ամ մանուկ մատաղ՝ որ ոչ գիտիցէ այսօր զբարի կամ զչար՝ նոքա մտցեն անդր. և նոցա տաց զնա. և նոքա ժառանգեսցեն զնա: [40] *Եւ դուք դարձարուք՝ և չուեցէք յանապատն ընդ ճանապարհ կարմիր ծովուն:

*Եւ

Թուոց 13.24.
Տր
Ելից. 13.21.
Թուոց. 14.14.
Թուոց 14.23.
Սաղմ. 94.11.
Այր. 3.26. և 4.21. և 34.4.
Թուոց. 20.12.

Թուոց 14.40.

[41] * Եւ պատասխանի ետուք ինձ և ասացէք. մեղաք առաջի Տն Այ մերոյ. ելցուք մեք՝ և տացուք պատերազմ. որպէս պատուիրեաց մեզ Տր Ած մեր. և առեալ իւրաքանչիւր զգործի պատերազմի իւրոյ՝ գումարեցայք ելէք 'ի լեառն : [42] * Եւ ասէ ցիս Տր՝ ասա ցնս.

Թուոց 14.42.

մի ելանէք՝ և մի մարտնչիք՝ զի չեմ ընդ ձեզ. գուցէ խորտակիցիք առաջի թշնամեաց ձերոց : [43] * Եւ խօսեցայ ընդ ձեզ. և ոչ լուայք ինձ՝ և անցիք զբանիւ Տն. և անսաստեցիք՝ ելիք 'ի լեառն : [44] * Եւ ելեալ ամօրհացին՝ որ բնակեալն էր 'ի լերինն յայնմիկ՝ ընդդէմ ձեր՝ հալածեաց զձեզ՝ որպէս պատիցի մեղու. և խոցոտեցին զձեզ 'ի սէիրայ մինչև ցհերմայ : [45] * Եւ նստեալ լայիք առաջի Տն՝ և ոչ լուաւ ձայնի ձերում. և ոչ անսաց ձեզ : [46] * Եւ նստայք 'ի կադէս աւուրս բազումս. որչափ աւուրս երբեմն նստայք անդր։

## Գլ: Բ:

[1] Եւ դարձեալ չուեցաք յանապատն ը ճանապարհ կարմիր ծովուն. զոր օրինակ խօսեցաւ Տր ընդ իս. և պատեցաք զսէիր լերամբ աւուրս բազումս : [2] * Եւ ասէ ցիս Տր Ած: [3] * Շատ լիցի ձեզ պատել զլերամբդ՝ արդ՝ դարձարուք ընդ կողմն հիւսիսոյ : [4] * Եւ ժողովրդեանդ պատուէր տուր՝ և ասասցես. դուք անցանիկ անցանէք առ սահմանօք եղբարց ձերոց որդւոց եսաւայ. որք բնակեալ են 'ի սէիր. և երկնչիցին 'ի ձէնջ : [5] * Եւ զգուշանայցէք յոյժ. մի գրգռիցիք ընդ նոսա 'ի պատերազմ. զի ոչ տաց ձեզ յերկրէն նոցա՝ և ոչ քայլ մի ոտին. քանզի վիճակաւ ետու եսաւայ զլեառնն սէիր : [6] * Կերակուրս գնեսջիք 'ի նոցանէ՝ և կերիջիք. և ջուր չափով արծաթոյ առջիք 'ի նոցանէ՝ և արբջիք: [7] * Զի Տր Ած մեր օրհնեաց զքեզ յամենայն գործս ձեռաց քոց. ծանիր զիարդ անցեր ընդ անապատն մեծ և ահագին. ահա քառասուն ամ Տր Ած քո ընդ քեզ է. և ոչ իւիք կարօտացար : [8] * Եւ անցաք առ եղբարբք մերովք որդւովքն եսաւայ բնակելովքն 'ի սէիր. առ ճանապարհաւն արաբացւոց յեդոմայ՝ և 'ի գասիոնգաբերայ. և դարձեալ անցաք ընդ ճանապարհ անապատին մովաբու : [9] * Եւ ասէ ցիս Տր. մի թշնամանայցիք ընդ մովաբացիսն. և մի գրգռիցէք ընդ նս պատերազմ. զի ոչ տաց ձեզ յերկրէն նոցա 'ի վիճակ. քանզի որդւոցն ղովտայ ետու զսէիր 'ի ժառանգութի :

չարութեր

[10] * Եւ ոմմինքն նախ բնակեալ էին 'ի նմա՝ ազգ մեծ և բազում և հզօր. որպէս ենակիմք : [11] * Ընդ ռափայիմսն համարիցին, նոյնպէս և նոքա իբրև զենակիմն՝ և մովաբացիքն անուանէին զնոսա ոմմինս : [12] * Եւ 'ի սէիր նախ բնակեալ էր քոռեցին. և որդիքն եսաւայ կորուսին զնս. և սատակեցին զնոսա յերեսաց իւրեանց. և բնակեցան փոխանակ նոցա. զորօրինակ արար իէղ զերկիր ժառանգութե իւրոյ՝ զոր ետ նմ Տր Ած : [13] * Եւ արդ՝ արիք՝ չուեցէք և [14] անցէք ընդ ձորն զարեդ : * Եւ աւուրք որչափ անկան մեզ 'ի գնալն մեր 'ի կադէսբառնեայ, մինչև անցաք ընդ ձորն զարեդ՝ երեսուն և ութ ամ. մինչև անկաւ ամ ազգ արանց պատերազմողաց 'ի բանակէ անտի՝ որպէս [15] երդուաւ նոցա Տր Ած : * Եւ ձեռն Տն էր 'ի վերայ նց սատակել զնոսա 'ի բա[16]նակէն մինչև անկան : * Եւ եղև իբրև անկան ամենայն արք պատերազմօղք մեռեալք 'ի միջոյ ժողովրդեանն:

[17] * Խօսեցաւ Տր ընդ իս՝ և ասէ:

[18] * Դու անցանես այսօր առ սահմա[19]նօք մովաբու 'ի սէիր: * Եւ մօտ հասանիցէք յորդիսն ամոնայ՝ մի թշնամանայցիք ընդ նոսա. և մի գրգռիցէք ընդ նոսա պատերազմ. զի ոչ տաց ձեզ զերկիր որդւոցն ամոնայ 'ի վիճակ. քանզի որդւոցն ղովտայ ետու զնոսա [20] վիճակաւ: * Երկիր որ ռափայնայ համարեսցի՝ քանզի նախ ռափայիմք բնակէին 'ի նմա. և ամոնացիք անուանէին [21] զնս զոմմինս : * Ազգ մեծ և բազում և զօրաւոր իբրև զենակիմն. և կորոյս զնս Տր յերեսաց նոցա. և ժառանգեցին՝ և բնակեցան փոխանակ նց:

[22] * Որպէս արար որդւոցն եսաւայ բնակելոց 'ի սէիր. զոր օրինակ սատակեաց Տր զքոռեցին յերեսաց նոցա. և ժառանգեցին՝ և բնակեցան փոխանակ նոցա [23] մինչև ցայսօր : * Եւ խևացիքն՝ որք բնակեալ էին յասիրօթ մինչև ցգազայ. և գամիրքն՝ որք ելեալ էին 'ի գամրաց՝ սատակեցին զնս. և բնակեցան [24] փոխանակ նց: * Արդ արիք՝ չուեցէք և անցէք ը ձորն առնոնայ՝ ահա մատնեցի 'ի ձեռս քո զսեհօն արքայ եսեբոնայ զամորհացի. և զերկիր նորա սկսիր ժառանգել. գրգռել ընդ նմա [25] պատերազմ: * Յօրէ յայսմանէ սկսիր տալ զահ և զերկիւղ քո առաջի ամ ազգաց՝ որք են 'ի ներքոյ երկնից. զի որք լուիցեն զանուանէ քումմէ խռովեսցին՝ և երկունք կալցեն զնս յերե[26]սաց քոց : * Եւ առաքեցի հրեշտակս յանապատէն կեդմօթայ առ սեհօն

յորդեր

Թուոց 21.21.

որքայ

արքայ Եսեբոնայ բանիւք խաղաղու-
թե՛, և ասեմ: *Անցից ընդ երկիր քո, 27
զճանապարհայն գնացից · ոչ խոտորե
ցայց յաջ և ոչ յահեակ: *Կերակուր 28
արծաթոյ վաճառեսցես ինձ՝ և կե-
րայց · և ջուր արծաթոյ վաճառես-
ցես ինձ՝ և արբից · բայց զի ոտիւք և
եթ անցից: *Որ̄պ արարին ինձ որդիքն 29
Եսաւայ բնակեալքն ՚ի Սեիր՝ և Մով-
աբացիքն բնակեալք յարոէր · մինչև
անցից ընդ յորդանան՝ յերկիրն զոր
Տր̄ Ա̄ծ տացէ մեզ: *Եւ ոչ կամեցաւ 30
Սեհօն արքայ Եսեբոնայ անցանել մեզ
առ նովաւ · զի խստացոյց Տր̄ Ա̄ծ մեր
զոգի նորա · և կարծրացոյց զսիրտ նր̄
զի մատնեսցի ՚ի ձեռս քո յաւուրսն յայն
միկ: *Եւ ասէ ցիս Տր̄ ‖ ահա սկսեալ 31
եմ մատնել առաջի երեսաց քոց զՍե-
հօն արքայ Եսեբոնի զամորհացի՝ և
զերկիրն նորա · սկիզբն լինձակաւ ժա-
ռանգել զերկիրն նորա: *Եւ ել Սե- 32
հօն արքայ Եսեբոնի ընդդէմ մեր ·
ինքն և ժողովուրդ իւր պատերազ-
մաւ ՚ի Սիասար: *Եւ մատնեաց զնա 33
Տր̄ Ա̄ծ մեր ՚ի ձեռս մեր · և հարաք
զնա՝ և զորդիս նորա · և զամենայն ժո
ղովուրդ նորա: *Եւ յաղթեցաք ա̄մ 34
քաղաքաց նր̄ ՚ի ժամանակին յայնմիկ ·
և սատակեցաք զա̄մ քաղաքս նորա մի
ըստ միոջէ · և զկանայս նց՝ և զման-
կունս իւրեանց · և ոչ թողաք ՚ի նո-
ցանէ ապրեալ: *Բայց զի զխաշինսն 35
ածաք յաւարի · և զկապուտ քաղա-
քացն զոր առաք յարոէրայ: *Որ է 36
առ եզերբ ձորոյն առնօնայ: և զքա-
ղաքն՝ որ է ՚ի ձորն մինչև ցսահմանս
գաղաադու · և ոչ էր քաղաք՝ որ ապրե
ցաւ ՚ի մէնջ · այլ զա̄մ մատնեաց Տր̄
Ա̄ծ մեր ՚ի ձեռս մեր: *Բայց յերկիր 37
որդւոցն ամոնայ՝ յոր ոչ մերձեցաք՝
զամենայն առոճարձանս ձորոյն յաբօ
կայ · և զա̄մ քաղաքսն լեռնականս՝ ոնց
պատուիրեաց մեզ Տր̄ Ա̄ծ մեր:

‖ Ա̄. Ծն. 2. 9.

ԳԼ: Գ:

Ե՛ ‖ դարձաք՝ ելաք ընդ ճանա- 1
պարհն Բասանու · և ել ովգ ար
քայ Բասանու ընդդէմ մեր · ինքն և
ա̄մ ժողովուրդ նր̄ պատերազմաւ ՚ի
Եդրային: *Եւ ասէ ցիս Տր̄ · մի՛ երկն 2
չիցիս ՚ի նմանէ · զի ՚ի ձեռս քո մատ-
նեցի զնա · և զամենայն ժողովուրդ
նորա · և զա̄մ երկիր նորա · և արաս-
ցես նմա ‖ որպէս արարեր Սեհօնի ար
քայի ամորհացւոց՝ որ բնակեալ էր
յԵսեբոն: * ‖ Եւ մատնեաց զնա Տր̄ 3
Ա̄ծ մեր ՚ի ձեռս մեր · և զովգ արքայ
Բասանու, և զա̄մ ժողովուրդն նր̄ · և
հա

‖ Թուոց 21.33. ‖ [illegible] 29.7. ‖ Թուոց 21.24. ‖ Թուոց 21.35.

հարաք զնա մինչև ոչ թողուլ նմա
4 զաւակ: *Եւ յաղթեցաք ա̄մ քաղա-
քացն նր̄ ՚ի ժամանակին յայնմիկ · և
ոչ էր քաղաք՝ զոր ոչ առաք ՚ի նոցա-
նէ · վաթսուն քաղաք՝ զա̄մ շուրջ ըզ
գաւառաւն արգոբայ թագաւորին
5 ովգայ ՚ի Բասանու *Ամենայն քաղաքք
ամուրք բարձրապարիսպք · դրամբք
դռնափակօք · թող զքաղաքսն ար-
ձակաքաղաքս փերեզացւոց բազում
6 յոյժ: *Եւ սատակեցաք զնս՝ որպէս
արարաք զՍեհօն արքայ Եսեբոնի · և
սատակեցաք զամենայն քաղաքսն մի
ըստ միոջէ · և զկանայս և զմանկունս ·
7 և ոչ թողաք մնացորդ: *Եւ զա̄մ
զանասուն և զկապուտ քաղաքացն ա-
8 ծաք մեզ յաւար: *Եւ առաք ՚ի ժա
մանակի յայնմիկ զերկիրն ՚ի ձեռաց
երկուց թագաւորացն ամորհացւոց ·
որք էին յայնկոյս յորդանանու յառնո
9 նայ մինչև ցահերմոն: *Եւ փիւնի-
կեցիք անուանեցին զահերմոնն սանի
ր · և ամորհացին անուանեաց զնա սա
10 նիր: *Ամենայն քաղաքք միսորայ · և
ա̄մ գաղաադ · և ա̄մ Բասան · մինչև
ցսեղքայ · և ցեդրայինս · քաղաքք թա
գաւորութե էին ովգայ ՚ի Բասան:
11 * Զի ովգ միայն արքայ Բասանու
մնաց յռափայնոց անտի · և դահոյք նր̄
դահոյք երկաթիք · և ահա է այն յամ-
բոցի որդւոցն ամոնայ՝ ինն կանգունք
երկայնութի նր̄ · և չորք կանգունք
լայնութի նորա · սկայից կանգնով:
12 *Եւ զերկիրն զայն ժառանգեցաք ՚ի
ժամանակի յայնմիկ, յարոէրայ որ է
առ եզերբ ձորոյն առնօնայ, և զկէս
ձորոյն գաղաադու · և զքաղաքս նր̄ ·
13 ‖ Ետու ռուբենի և գադայ: *Եւ զաւե
լորդն գաղաադու՝ և զամենայն զբա
սան զթագաւորութին ովգայ՝ ետու
կիսոյ ցեղին մանասէի · և զամենայն
գաւառն արգոբայ՝ և զա̄մ Բասանն ·
որ երկիր ռափայնոցն համարեցի:
14 *Եւ յայիր որդի մանասէի էառ զա̄մ
գաւառն արգոբայ մինչև ցսահմանս
գարգասեայ և ոմքատեայ · և անուա-
նեաց զնա յիւր անուն · զԲասան՝ աւօ
15 թ-իէր · մինչև ցայսօր ժամանակի *Եւ
16 մաքիրայ ետու զգաղաադ: *Եւ ռու
բենի՝ և գադայ ետու ՚ի գաղաադէ
մինչև ՚ի ձորն առնօնայ ը̃ մէջ ձորոյն՝
սահման մինչև ցյաբոկ՝ ձորն որ է
17 սահման որդւոցն ամոնայ: *Եւ արա
բիա · և յորդանան սահման է նմա ՚ի
քենէրեթայ մինչև ցծո̃վն արաբիայ
ծովն աղի · յասեդովթայ՝ յարևելից
18 փասգայ: *Եւ պատուիրեցի ձեզ ՚ի
ժամանակին յայնմիկ՝ և ասեմ: Տր̄ Ա̄ծ

‖ Թուոց 32.29. և 33.

X մեր

մեր ետ ձեզ զերկիրս զայս 'ի վիճակ. վառեցարո՛ւք՝ անցէ՛ք առաջի եղբարց ձերոց՝ որդւոցն Իէլի ամ զօրաւոր: 19 *Բայց կանայք ձեր՝ և մանկունք ձեր. և անասուն ձեր՝ գիտեմ զի անասուն բազում է ձեր, բնակեսցին 'ի քաղաքս ձեր՝ զորս ետու ձեզ: 20 *Մինչև զետեղեսցէ Տ՟ր Ա՟ծ մեր զեղբարս ձեր, որպէս և զձեզ. զի ժառանգեսցեն և նոքա զերկիրն՝ զոր Տ՟ր Ա՟ծ մեր տացէ նոցա յայնկոյս Յորդանանու. և դարձջի՛ք այսրէն յիւրաքանչիւր ժառանգութիւն իւր՝ զոր ետու ձեզ: 21 *Եւ՛ յեսուայ պատուիրեցի 'ի ժամանակին յայնմիկ՝ և ասեմ. աչք ձեր իսկ տեսին զամ, զոր արար Տ՟ր Ա՟ծ քո ընդ երկուս թագաւորսն ընդ այնոսիկ. նոյնպէս արասցէ Տ՟ր ընդ ամենայն թագաւորութիւնս՝ յորոց վերայ դիմեսցես դու: 22 *Մի՛ զանգիտիցէք. զի Տ՟ր Ա՟ծ մեր ինքնին պատերազմեսցի փոխանակ ձեր: 23 *Եւ՛ աղաչեցի զՏէր Ա՟ծ 'ի ժամանակին յայնմիկ՝ և ասեմ: 24 *Տէ՛ր՝ Տէ՛ր. դու սկսար ցուցանել ծառայի քում զսաստկութի քո և զզօրութի քո. զձեռն հզօր՝ և զբազուկ բարձր: քանզի ո՞վ է Ա՟ծ յերկինս կամ յերկրի՝ որ առնիցէ որպէս դու արարեր ըստ զօրութե քում: 25 *Արդ՝ անցեալ տեսից զերկիրն բարի՝ որ է յայնկոյս Յորդանանու. զլեառն բարի՝ զերկրորդն Լիբանանու: 26 *Եւ՛ անտես արար զիս Տ՟ր վ՟ն ձեր. և ո՛չ լուաւ ինձ. և ասէ ցիս Տ՟ր. շա՛տ լիցի քեզ՝ մի՛ ևս յաւելցիս խօսել զբանդ զայդ: 27 *Ե՛լ 'ի կատար կոփածոյին. և հայեցեալ աչօք քովք ընդ ծովակողմն. և ընդ հիւսիս. և ընդ հարաւ և ընդ արևելս. տե՛ս աչօք քովք: քանզի ո՛չ անցանիցես ընդ այդ Յորդանան: 28 *Եւ՛ պատուիրեա՛ յեսուայ՝ և զօրացուսցես զնա. և մխիթարեսցես զնա՝ զի նա անցցէ առաջի ժողովրդեանդ խմբ այդորիկ. և նա ժառանգեցուսցէ դ՟ց զերկիրն՝ զոր տեսեր: 29 *Եւ՛ նստաք 'ի հովիտսն մերձ 'ի տունն Փոգորայ:

‖ Թւոց 27.18.

փաղգայ

‖ Ա՟յր. 31.2. և 34.1.

## Գլ: Դ.

1 Եւ՛ այժմ Իսրայէլ՝ լո՛ւր իրաւանց և դատաստանաց. զորս ես ուսուցանեմ քեզ այսօր առնել՝ զի կեցջի՛ք. և մտանիցէք, և ժառանգիցէք զերկիրն՝ զոր Տ՟ր Ա՟ծ մեր տացէ ձեզ: 2 *‖Մի՛ յաւելուցուք ինչ 'ի բանն՝ զոր ես պատուիրեմ ձեզ. և մի՛ հատանիցէք 'ի նմանէ: պահեսջի՛ք զհրամանս Տ՟ն Ա՟յ մերոյ՝ զոր ես պատուիրեմ ձեզ: 3 *‖Աչք ձեր տեսին՝ զորինչ արար Տ՟ր ընդ Բէելփեգովր. զի ամ մարդ՝ որ չոգաւ զհետ Բէելփեգովրայ՝ սատակեաց զնա Տ՟ր Ա՟ծ մեր 'ի մէնջ: 4 *Բայց դուք՝ որք յարեցայք 'ի Տ՟ր Ա՟ծ ձեր. կենդանի էք ամենեքեան յաւուրս յայսմիկ: 5 *Տեսէ՛ք՝ զի ուսուցի ձեզ զիրաւունս և զդատաստանս՝ որպէս պատուիրեաց ինձ Տէր առնել զայն յերկրին՝ յոր դուք մտանիցէք ժառանգել զնա: 6 *Եւ պահեսջի՛ք՝ և արասջի՛ք. զի այն է իմաստութի ձեր և հանճար առաջի ամենայն ազգացն՝ որք լսիցեն զամ իրաւունս զայսոսիկ՝ և ասիցեն. ահա ժողովուրդ իմաստուն և հանճարեղ՝ ազգս այս մեծ: 7 *Քանզի ո՛վ իցէ ազգ մեծ՝ որոյ իցէ Ա՟ծ մօտ 'ի նմա. որպէս Տ՟ր Ա՟ծ մեր ամի՝ որովք կարդասցուք առ նա: 8 *Եւ ո՛ր ազգ մեծ՝ որոյ իցեն իրաւունք և դատաստանք արդարք. ըստ ամի օրինացս այսոցիկ՝ զոր ես տամ այսօր առաջի ձեր: 9 *Զգուշա՛ց 'ի քեզ՝ և զգո՛յշ լեր անձին քումյոյժ. մի՛ մոռանայցես զամենայն բանս զայսոսիկ՝ զորս տեսին աչք քո. և մի՛ մերժեսցին 'ի սրտէ քումմէ զամ աւուրս կենաց քոց. և խելամուտ արասցես որդւոց քոց. և որդւոց որդւոց քոց: 10 *Զօրն յորում կացիք դուք 'ի Քորեբ առաջի Տ՟ն Ա՟յ ձերոյ, յաւուրն եկեղեցւոյ. յորժամ ասաց ցիս Տ՟ր, թէ եկեղեցացո՛ առ իս զժողովուրդ. և լուիցեն զպատգամս իմ. զորս ուսուսցին երկնչել յինէն զամ աւուրս՝ որչափ կենդանի իցեն դոքա 'ի վ՟ր երկրի. և ուսուսցեն զորդիս իւրեանց: 11 *‖Եւ՛ մատուցեալ կայիք դուք առ ստորոտով լերինն. և լեառնն բորբոքիւր հրով մինչև ցերկինս. և խաւար՝ և մէգ՝ և մառախուղ էր: 12 *Եւ՛ խօսեցաւ Տ՟ր ընդ ձեզ 'ի միջոյ հրոյն: զձայն պատգամացն լուայք դուք. և զնմանութիւն ինչ ոչ տեսիք. բայց միայն զբարբառն: 13 *Եւ պատմեաց ձեզ զուխտն իւր՝ զոր պատուիրեաց ձեզ առնել, զտասն պատգամսն. և գրեաց զնոսա 'ի վ՟ր երկուց քարեղէն տախտակաց: 14 *Եւ պատուիրեաց ինձ 'ի ժամանակին յայնմիկ ուսուցանել իրաւունս ձեզ՝ և դատաստանս. և առնել ձեզ զն՟ս յերկրին՝ յոր դուք մտանիցէք ժառանգել զնա: 15 *Եւ զգուշացարո՛ւք յոյժ անձանց ձերոց. զի նմանութի ինչ ոչ տեսէք յաւուրն յայնմիկ՝ յորում խօսեցաւ ընդ ձեզ Տ՟ր 'ի Քորեբ լերինն 'ի միջոյ հրոյն: 16 *Մի՛ անօրինիցիք. և առնիցէք ձեզ դրօշեալ՝ զնմանութի ամ պատկերի. նմանութի արուական, կամ իգական: 17 *Նմանութի ամ անասնոյ՝ որք իցեն յերկրի.

‖ Ա՟յր. 12.32.

‖ Թւոց 25.4.

‖ Եփր. 19.18.

յերկրի․ նմանութիւն ամ՟ հաւու թռչ_
նոյ՝ որ թռչիցի ՚ի ներքոյ երկնից ։
18 * Նմանութիւն ամ՟ սողնոց՝ որք սողի_
ցին ՚ի վ՟ր երկրի․ նմանութ՟ի ամ՟ ձկանց՝
որք իցեն ՚ի ջուրս ՚ի ներքոյ երկրի ։
19 * Եւ մի՛ հայեցեալ ընդ երկինս տե_
սանիցես զարեգակն՝ և զլուսին՝ և զաս
տեղս․ և զամ՟ զարդ երկնից․ և մոլո
րեալ երկիրպագանիցես նց՟ և պաշտի
ցես զնոսա․ զորս բաժանեաց Տր Ա՟Ծ
ամ՟ ազգաց՝ որք ՚ի ներքոյ երկնից ։
20 * Եւ զձեզ էառ ՚ի ձեռն Ա՟Ծ․ և եհան
զձեզ յերկաթեղէն հնոցէն յեգիպ_
տոսէ․ լինիլ նմա ժողովուրդ վիճա
կաւ․ որպ՟ և յաւուր յայսմիկ ։ 21 * Եւ
Տր բարկացաւ ինձ վ՟ն բանիցն ասա_
ցելոց ՚ի ձէնջ․ և երդուաւ՝ զի մի՛ ան_
ցից ընդ այդ յորդանան․ և զի մի՛ մտա
նիցեմ յերկիրն՝ զոր Տր Ա՟Ծ քո տացէ
քեզ ՚ի ժառանգութի ։ 22 * Եւ արդ ես
աւասիկ մեռանիմ յերկրիս յայսմիկ․
և ոչ անցանեմ ընդ յորդանան․ բայց
դուք անցանէք՝ և ժառանգէք զեր_
կիրն բարի ։ 23 * Զգոյշ լերուք՝ գուցէ
մոռանայցէք զուխտն Տն Ա՟Յ մերոյ՝
զոր ուխտեաց ընդ ձեզ՝ և առնիցէք
ձեզ դրօշեալ՝ նմանութի յամ՟է՝ յորոց
պատուիրեաց քեզ Տր Ա՟Ծ քո ։ 24 * Զի
Տէր Ա՟Ծ քո հուր ծախիչ է․ Ա՟Ծ նա_
խանձոտ ։ 25 * Եւ եթէ ծնանիցիս որ_
դիս, և զորդիս որդւոց քոց, և յամի_
ցէք յերկրին, և անօրինիցիք, և առ_
նիցէք դրօշեալ՝ զնմանութի ամի ։ և
առնիցէք չար առաջի Տն Ա՟Յ ձերոյ
բարկացուցանել զնա ։ 26 * Ունիմ ձեզ
վկայս այսօր զերկինս և զերկիր․ զի
կորստեամբ կորնչիցիք յերկրէն՝ յոր
դուքն անցանէք ընդ յորդանան ժա_
ռանգել զնա ։ և ոչ բազմացուցանի
ցէք զժամանակս աւուրց ՚ի վ՟ր նորա․
այլ սատակելով սատակիջիք ։ 27 * Եւ
ցրուեսցէ Տր զձեզ ընդ ամ՟ ազգս․ և
մնայցէք սակաւք թուով ՚ի մէջ ազ_
գացն՝ յորս տարցի զձեզ Տր անդր ։
28 * Եւ պաշտիցէք անդ զաստուածս
օտարս զձեռագործս մարդկան․ զփայ_
տեղէնս և զքարեղէնս ։ որք ոչ տեսա
նիցեն՝ և ոչ լսիցեն․ և ոչ ուտիցեն՝ և
ոչ հոտոտիցեն ։ 29 * Եւ խնդրիցէք անդ
զՏր Ա՟Ծ ձեր՝ և գտանիցէք յորժամ
խնդրիցէք զնա յամ՟ սրտէ ձերմէ․ և
յամ՟ անձնէ ձերմէ, ՚ի նեղութե ձե_
րում ։ 30 * Եւ գտանիցեն զքեզ ամենայն
բանքս այսոքիկ ՚ի վախճանի աւուրց ։
և դարձցիս դու առ Տր Ա՟Ծ քո՝ և լուի
ցես ձայնի նր ։ 31 * Զի Ա՟Ծ ողորմած է․
ոչ թողցէ զքեզ ։ և ոչ մոռասցի զուխտ
հարցն քոց՝ զոր երդուաւ նց ։ 32 * Հար_

[Margin: Եր․ 1․37․ և 3․26․ Մայր․ 34․1․ — Եբր․ 12․29․ — Իմաս․ 1․2․]

ցէք զաւուրսն զառաջինս զեղեալս
յառաջագոյն քան զձեզ․ յորէ յորմէ
հաստատեաց Ա՟Ծ զմարդ յերկրի․ ՚ի
ծագաց երկրի մինչև ՚ի ծագս երկնից ։
եթէ եղեալ իցէ ըստ բանիս մեծի
այսորիկ ։ եթէ ազդեալ իցէ լուր այս
պիսի ։ 33 * Եթէ լուեալ իցէ ազգի զձայն
Ա՟Յ կենդանւոյ բարբառելոյ ՚ի միջոյ
հրոյ ։ որպէս լուար դու՝ և կեցեր ։
34 * Եթէ յօժարեալ լիցի Ա՟Ծ մտանել
առնուլ զիւր ազգ ՚ի միջոյ ազգի փոր
ձութե՟ք՝ և նշանօք՝ և արուեստիւք․ և
պատերազմաւ․ հզօր ձեռամբ՝ և բարձր
բազկաւ․ և մեծամեծ տեսլեամբք․
ըստ ամի զոր արար Տր Ա՟Ծ մեր յե_
գիպտոս՝ յանդիման քո իսկ տեսա_
նելով ։ 35 * Զի գիտասցես թէ Տր նա
է Ա՟Ծ․ և չիք այլ ոք բաց ՚ի նմանէ ։
36 * Յերկնից լսելի եղև բարբառ նորա
խրատել զքեզ․ և յերկրի եցոյց քեզ
զհուր իւր զմեծ՝ և զպատգամս նորա
լուար ՚ի միջոյ հրոյ ։ 37 * Վասն սիրելոյ
նր զհարսն քո ։ և ընտրեաց զզաւակ
նոցա յետ նց զձեզ քան զամ՟ ազգս․
և եհան զքեզ ինքնին զօրութբ իւրով
մեծաւ յեգիպտոսէ ։ 38 * Սատակել քեզ
զազգս մեծամեծս՝ և հզօրագոյնս քան
զքեզ յերեսաց քոց․ տանել զքեզ՝ և
տալ քեզ զերկիր նոցա ՚ի ժառանգու
թի որպ՟ ունիս իսկ այսօր ։ 39 * Եւ ծա
նիցես այսօր՝ և դարձցիս մտօք․ զի Տր
Ա՟Ծ քո՝ նա է յերկինս ՚ի վեր, և յերկիր
՚ի խոնարհ․ և չիք այլոք բաց ՚ի նմանէ ։
40 * Եւ պահեսցես զիրաւունս նորա․ և
զպատուիրանս նր՝ զոր ես պատուի_
րեմ քեզ այսօր․ զի բարի լինիցի քեզ՝
և որդւոց քոց յետ քո․ երկայնակեաց
լինիցիս յերկրին՝ զոր Տր Ա՟Ծ տացէ
քեզ զամենայն աւուրս ։ 41 * Յայնժամ
զատոյց մովսէս երիս քաղաքս յայնկոյս
յորդանանու յարևելից կողմանէ ։
42 * Փախչել անդր սպանողին՝ որոք սպա
նանիցէ զընկեր իւր և ոչ գիտութե՟ ․
և ինքն ոչ ատեայր զնա յերէկն և յե
ռանդ, անկցի ՚ի մի քաղաքացն այնո_
ցիկ՝ և կեցցէ ։ 43 * Զբոսոր յանապա
տին՝ ՚ի դաշտին յերկրին ռուբենի ։ և
զռամովթ ՚ի գաղաադ գադայ․ և զգօ_
ղոն ՚ի բասան մանասէի ։ 44 * Եւ այս
օրէնն է՝ զոր եդ մովսէս առաջի որդւոցն
իէղի ։ 45 * Եւ այսոքիկ են վկայութիք՝
և իրաւունք՝ և դատաստանք՝ զոր խօ_
սեցաւ մովսէս ընդ որդիսն իէղի յելա_
նել նոցա յերկրէն եգիպտացւոց ։
46 * Յայնկոյս յորդանանու․ ՚ի ձորն որ է
մերձ ՚ի տունն փեգովրայ․ յերկրին
սեհօնի արքայի ամօրհացւոց՝ որ բնա
կեալ էր յեսեբօն․ զոր եհար մովսէս

[Margin: Ելից․ 13․ 21․ — Թուոց 35․14․ — Յեսու 20․8․]

և որդիքն Իսրայէլի յելանելն իւրեանց յերկրէն Եգիպտացւոց։ 47 *Եւ ժառանգեցին զերկիրն նորա․ և զերկիր Ովգայ Թագաւորին Բասանու․ զերկուց թագաւորացն Ամորհացւոց՝ որք էին յայնկոյս Յորդանանու ընդ արևելս։ 48 *Յարոյերայ՝ որ է առ եզերբ ձորոյն Առնոնայ, մինչև ցլեառնն Սէհոնի՝ որ է Ահերմոն։ 49 *Զամ զարաբիա՝ որ է յայնկոյս Յորդանանու ընդ արևելս․ մինչև ցծովն արաբացւոց ՚ի ներքոյ Ասեդովթայ կոփածոյին։

որ է փառ գայ.

## Գլ: Ե:

1 Եւ կոչեաց Մովսէս զամ Իսրայէլ՝ և ասէ ցնս․ լուր Իէլ զիրաւունս և զդատաստանս՝ զորս ես խօսիմ յականջս ձեր յաւուր յայսմիկ․ և ուսջիք զնս․ և զգոյշ լինիջիք առնել զնոսա։ 2 *Տր Ած մեր ուխտեաց ձեզ ուխտ ՚ի Քորեբ։ 3 *Ոչ եթէ հարցն ձերոց ուխտեաց Տր զուխտն զայն, այլ ձեզ․ և դուք ամենեքին կենդանի էք այսօր։ 4 *Դէմ յանդիման խօսեցաւ Տր ընդ ձեզ ՚ի միջոյ հրոյն։ 5 *Եւ ես կայի ՚ի մէջ Տն և ձեր ՚ի ժամանակին յայնմիկ․ պատմել ձեզ զպատգամն Տն․ զարհուրեցայք յերեսաց հրոյն՝ և ոչ ելիք ՚ի լեառն․ ասէ։ 6 *Ես եմ Տր Ած քո՝ որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց ՚ի տանէ ծառայութեան։ 7 *Մի լինիցին քեզ աստուածք օտարք առաջի իմ։ 8 *Եւ մի առնիցես դու քեզ դրօշեալ՝ և մի զնմանութիւն ամի որինչ յերկինս ՚ի վեր․ և որինչ յերկրի ՚ի խոնարհ․ և որինչ ՚ի ջուրս ՚ի ներքոյ երկրի։ 9 *Մի երկիրպագանիցես նոցա․ և մի պաշտեսցես զնոսա․ զի ես եմ Տր Ած քո․ Ած նախանձոտ․ հատուցանեմ զմեղս հարանց որդւոց իւրեանց՝ յերիս և ՚ի չորս ազգս ատելեաց իմոց։ 10 *Եւ առնեմ ողորմութիւն ՚ի հազար ազգս սիրելեաց իմոց․ և որոց պահիցեն զհրամանս իմ։ 11 *Մի առնուցուս զանուն Տն Այ քոյ ՚ի վերայ սնոտեաց․ զի ոչ սրբեսցէ Տր Ած քո զայն՝ որ առնուցու զանուն նորա ՚ի վն սնոտեաց։ 12 *Զգուշասջիր աւուրն շաբաթու սրբել զնա․ ոպ և պատուիրեաց քեզ Տր Ած քո։ 13 *Զվեց օր գործեսցես՝ և արասցես զամ զգործ քո։ 14 *Յաւուրն եօթներորդի շաբաթ Տն Այ քոյ․ մի գործեսցես ՚ի նմա զամ գործ քո․ դու և ուստր քո․ և ծառայ քո՝ և աղախին քո․ եզն քո՝ և էշ քո՝ և ամենայն անասուն քո․ և եկն որ ՚ի ներքոյ դրանց քոց․ զի հանգիցէ ծառայ քո՝ և աղախին քո՝ ոպ և դու․

Ելից. 20. 2. Ղեւտ. 26. 1. Սաղմ. 80. 11. Ելից. 20. 3. Սաղմ. 80. 10. Ելից. 20. 5. Ղեւտ. 26. 1. Սաղմ. 96. 7. Ելից. 34. 14. Ելից. 20. 7. Ղեւտ. 19. 12. Մատ. 5. 33. Ծննդ. 2. 2. Ելից. 20. 10. Ելից. 20. 12. Եբրայ. 4. 4.

15 *Եւ յիշեսցես դու՝ զի ծառայ էիր յերկրին Եգիպտացւոց․ և էհան ըզքեզ Տր Ած քո անտի հզօր ձեռամբ՝ և բարձր բազկաւ․ վն այսորիկ պատուիրեաց քեզ Տր Ած քո պահել զօրն շաբաթուց՝ և սրբել զնա։

16 *Պատուեա՛ զհայր քո՝ և զմայր քո՝ որպէս պատուիրեաց քեզ Տր Ած քո․ զի բարի լինիցի քեզ․ և երկայնակեաց լինիցիս ՚ի վերայ երկրին՝ զոր Տր Ած քո տացէ քեզ։

17 *Մի շնայցես։

18 *Մի սպանանիցես։

19 *Մի գողանայցես։

20 *Մի վկայիցես զընկերէ քումմէ վկայութիւն սուտ։

21 *Մի ցանկանայցես կնոջ ընկերի քոյ․ և մի ցանկանայցես տան ընկերի քոյ․ և մի անդեոյ նորա․ և մի ծառայի նր․ և մի աղախնոյ նր․ և մի եզին նր․ և մի իշոյ նր․ և մի ամ անասնոյ նր․ և մի ամի զինչ ընկերի քոյ իցէ։

22 *Զայս պատգամս խօսեցաւ Տր ընդ ժողովրդեանն ձերում ՚ի լերինն ՚ի միջոյ հրոյն․ ուր խաւարն՝ և մէգ՝ և մառախուղ էր․ մեծաւ բարբառով․ և ոչ ևս յաւել․ և գրեաց զնոսա ՚ի վն երկուց քարեղէն տախտակացն՝ և ետ ցիս։

23 *Եւ եղև իբրև լուայք զբարբառն ՚ի միջոյ հրոյն․ և լեառն բորբոքեալ էր հրով․ և մատուցեալ առ իս իշխանաց ցեղիցն ձերոց, և ծերակուտին ձերոյ՝ ասէին․ 24 *Ահա եցոյց մեզ Տր Ած զփառս իւր՝ և զմեծութիւն իւր․ և զբարբառ նորա լուաք ՚ի միջոյ հրոյ․ յաւուր յայսմիկ տեսաք՝ եթէ խօսիցի Ած ընդ մարդոյ՝ և կեցցէ։ 25 *Եւ արդ մի մեռցուք․ զի մի սատակեսցէ զմեզ հուրս այս մեծ․ եթէ յաւելուցումք մեք լսել զձայն Տն Այ մերոյ միւսանգամ․ և մեռանիցիմք։ 26 *Զի ո՞ ոք մսեղի իցէ որ լուաւ զձայն Այ կենդանւոյ բարբառելոյ ՚ի միջոյ հրոյ որպէս մեքս՝ և կեցցէ։ 27 *Մատիր դու, և լո՛ւր՝ զորինչ ասիցէ Տր Ած մեր՝ և դու խօսեսցիս ընդ մեզ զամ ինչ՝ զոր խօսիցի Տր Ած մեր ընդ քեզ․ և լուիցուք՝ և արասցուք։ 28 *Եւ լուաւ Տէր զբարբառ բանիցն ձերոց խօսելոյ ընդ իս․ և ասէ ցիս Տր․ լուայ զբարբառ բանից ժողովրդեանն՝ զոր խօսեցան ընդ քեզ․ ուղիղ խօսեցան զամ։ 29 *Ո՛ տացէ լինել այնպէս սրտից նց ՚ի նս երկնչել յինէն․ և պահել զպատուիրանս իմ զամ աւուրս․ զի բարի լինիցի նոցա՝ և որդւոց նց յաւիտեան։ 30 *Արդ երթ և ասա՛ ցնոսա․ դարձարուք դուք ՚ի տունս ձեր․ 31 *Եւ դու

աստ

Ելից. 20. 12. Սիր. 3. 9. Մատ. 15. 4. Մարկ. 7. 10. Եփես. 6. 2. Մատ. 5. 28. Հռոմ. 7. 7.

սա կա՛ց առ իս՝ և խօսեցայց ը՛ քեզ զպատուիրանս՝ և զիրաւունս՝ և զդատաստանս՝ զորս ուսուցանիցես նոցա. և արասցեն յերկրին՝ զոր ես տաց նց 'ի ժառանգութի ։ * Զգո՛յշ լերուք 32 առնելոյ՝ որպէս պատուիրեաց քեզ Տր Ած քո. և մի խոտորիցիս յաջ, և մի յահեակ։ * Ըստ ամ ճանապարհին՝ 33 զոր պատուիրեաց քեզ Տէր Ած մեր գնալ. զի հանգուսցէ զքեզ՝ և բարի արասցէ քեզ ։ և երկայնօրեայք լինիցիք յերկրին՝ զոր ժառանգիցէք։

## Գլ: Զ:

Եւ այսոքիկ են պատուիրանք՝ և 1 իրաւունք՝ և դատաստանք՝ զորս պատուիրեաց ձեզ Տր Ած մեր ։ ուսուցանել զձեզ՝ առնել այնպէս յերկրին՝ յոր դուք մտանիցէք ժառանգել։ * Զի երկնչիցիք 'ի Տէ Այ մերմէ ։ 2 պահել զամ իրաւունս նր՝ և զպատուիրանս նորա. զորս ես պատուիրեմ ձեզ այսօր։ դու և որդիք քո՝ և որդիք որդւոց քոց. զամ աւուրս կենաց քոց. զի երկայնօրեայք լինիցիք ։ * Եւ լո՛ւր 3 իէլ՝ և զգո՛յշ լեր առնելոյ. զի բարի լինիցի քեզ, և բազմանայցէք յոյժ։ որպ խոստացաւ Ած հարցն քոց տալ քեզ զերկիրն՝ որ բղխէ զկաթն և զմեղր։ ( այսոքիկ են իրաւունք և դատաստանք՝ զորս պատուիրեաց Մովսէս որդւոցն իէլի յանապատին. յելանել նոցա յերկրէն եգիպտացւոց։ )* Լո՛ւր իէլ՝ 4 Տր Ած մեր՝ Տր մի է ։ * ‖ Եւ սիրեսցես 5 զՏր Ած քո յամ սրտէ քումմէ. և յամ անձնէ քումմէ. և յամ զօրութէ քումմէ ։ * ‖ Եւ եղիցին պատգամքս 6 այսոքիկ՝ զորս ես պատուիրեմ քեզ այսօր 'ի սրտի քում և յանձին քում։ * Եւ խմացուսցես զայս որդւոց քոց ։ 7 և խօսեսցիս սոքօք. 'ի նստել 'ի տան, և 'ի գնալ 'ի ճանապարհի. և 'ի ննջել և 'ի յառնել։ *Եւ արկցես զսոսա նշան 8 'ի ձեռին քում. և եղիցի անշարժ առաջի աչաց քոց ։ * Եւ գրեսցես զնս 9 'ի վրայ սեմոց տանց քոց. և 'ի դրունս քո * Եւ եղիցի յորժամ տանիցի զքեզ 10 Տր Ած քո յերկիրն՝ զոր երդուաւ Տր հարցն քոց աբրահամու. և իսահակայ. և յակոբայ։ տալ քեզ քաղաքս մեծամեծս և գեղեցիկս՝ զորս ոչ շինեցեր։ * Եւ տունս լի ամ բարութեք՝ 11 զորս ոչ լցեր. և ջրհորս փորեալս՝ զորս ոչ փորեցեր. և այգիս՝ և ձիթենիս՝ զորս ոչ տնկեցեր։ * Եւ ուտիցես՝ և 12 յագիցիս ։ * Զգո՛յշ լինիջիր անձին 13 քում. գուցէ մոռանայցես զՏր Ած քո՝ որ եհան զքեզ յերկրէն եգիպտացւոց 'ի տանէ ծառայութեն։ ‖ 'ի Տէ Այ քումմէ երկիցես. և զնա պաշտեսցես. և 'ի նա յարեսցիս. և յանուն նր երդնուցուս ։ * Մի՛ երթայցէք զհետ 14 աստուծոց օտարաց. և զհետ աստուածոց ազգացն՝ որք շուրջ զձեօք իցեն ։ * Զի Ած նախանձոտ, Տր Ած 'ի միջի 15 քում. գուցէ բարկացեալ սրտմտիցի Տր Ած քո սատակել զքեզ յերեսաց երկրի ։ * ‖ Մի՛ փորձեսցես զՏր Ած 16 քո՝ որպէս փորձեցիք 'ի փորձութեն ։ *Պահելով պահեսցես զպատուիրանս 17 Տն Այ քոյ՝ զվկայութիս և զիրաւունս զորս պատուիրեաց քեզ ։ * Եւ արասցես զբարին և զհաճոյսն առաջի Տն 18 Այ քոյ. զի քեզ բարի լինիցի ։ և մտցես՝ և ժառանգեսցես զերկիրն բարի՝ զոր երդուաւ Տր հարցն մերոց։ * Հալածել զամ թշնամիս յերեսաց 19 քոց՝ որպէս և խօսեցաւ։ * Եւ եղիցի 20 յորժամ հարցանիցէ զքեզ վաղիւն որդին քո՝ և ասիցէ. զինչ են վկայութիքն՝ և իրաւունք և դատաստանք՝ զորս պատուիրեաց Տր Ած մեր մեզ ։ * Եւ ասասցես ցորդին քո. ծառայք էաք փարաւոնի յեգիպտոս. և էհան 21 զմեզ Տր Ած անտի հզօր ձեռամբ և բարձր բազկաւ ։ * Եւ ետ Տր նշանս 22 և արուեստս մեծամեծս՝ և չարաչարս երկրին եգիպտացւոց. 'ի փարաւոն և 'ի տուն նորա առաջի մեր։ * Եւ զմեզ 23 էհան անտի. զի ածցէ այսր՝ տալ մեզ զերկիրս զայս. զոր երդուաւ տալ հարցն մերոց. * Եւ պատուիրեաց մեզ 24 Տր առնել զամ իրաւունս զայսոսիկ. երկնչել 'ի Տէ Այ մերմէ. զի բարի լիցի մեզ զամ աւուրս ։ զի կեցցուք որպէս և այսօր ։ * Եւ ողորմութի 25 եղիցի մեզ, եթէ զգուշասցուք առնել զամ պատուիրանս զայսոսիկ առաջի Տն Այ մերոյ՝ որպէս և պատուիրեաց մեզ։

Մատ. 22.37. Մարկ. 12.30. Ղուկ. 10.27. Վեր. 11.13. Վեր. 10.20. Մատ. 4.10. Ղուկ. 4.8. Մատ. 4.7. Ղուկ. 4.12.

## Գլ: Է:

1 Եւ ‖ եթէ տարցի զքեզ Տր Ած քո յերկիրն՝ յոր դու մտանիցես ժառանգել. և բարձցէ զազգս մեծամեծս և բազումս յերեսաց քոց ։ ‖ զքետացին. և զգերգեսացին. և զամորհացին. և զքանանացին. և զփերեզացին. և զխևացին. և զյեբուսացին. եօթն ազգս մեծամեծս և զօրաւորս քան զքեզ ։ * Եւ մատնեսցէ զնոսա 2 Տր Ած քո 'ի ձեռս քո. հարցես զնս և եղծանելով եղծցես զնոսա. ‖ մի՛ դնիցես ընդ նոսա ուխտ. և մի՛ ողորմեսցիս նց ։ * Եւ ‖ մի՛ առնիցես զխնամութի 3 ընդ նոսա. զդուստր քո մի՛ տայցես ու-

‖ Վեր. 31.3. ‖ Ելից. 23.23. և 33.2. ‖ Ելից. 23.32. և 34.12 և 15. ‖ Ելից. 34.16.

ուստերն նորա. և զդուստր նց մի առ
նուցուս ուստերաց քում։ * Զի մի ապս 4
տամբեցուցանիցէ զորդիս քո յինէն.
և պաշտիցէ զաստուածս օտարս. և
բարկասցի սրտմտութի Տէր ՚ի ձեզ.
և սատակեսցէ զձեզ վաղվաղակի։
‖ Ելից. 23.24. * Այլ այսպէս արասջիք նոցա։ ‖ զբա 5
գինս նց կործանեսջիք. և զարձանս
‖ Մայր. 12.3. և 16.21. նց փշրեսջիք. և զանտառս նոցա կո_
տորեսջիք. և զդրօշեալս նոցա այրես
ջիք հրով։ * ‖ Զի ժողովուրդ սբ ես 6
‖ Մայր. 14.2. դու Տն Այ քում. ‖ և զքեզ ընտրեաց
Տր Ած քո. լինել նմա ժողովուրդ
‖ Մայր. 26.18. սեպհական քան զազգս ամ որ ՚ի վրա
երեսաց երկրի։ * Ոչ զի բազում էք 7
դուք քան զամ ազգս՝ հաճեցաւ Տէր
ընդ ձեզ՝ ընտրեաց զձեզ. զի դուք սա
կաւաւորք էք քան զամ ազգս։ * Այլ 8
վասն սիրելոյ զձեզ Տն. և պահելոյ
զերդումն՝ զոր երդուաւ հարցն ձե_
րոց, եհան զձեզ Տէր հզօր ձեռամբ՝
և բարձր բազկաւ. և փրկեաց զձեզ ՚ի
տանէ ծառայութե. ՚ի ձեռաց փա_
րաւոնի արքային եգիպտացւոց։ * Եւ 9
ծանիցես՝ զի Տր Ած քո նա է Ած հա
ւատարիմ։ որ պահէ զուխտ և զողոր
մութի սիրելեաց իւրոց. և որոց պա_
հեն զպատուիրանս նորա ՚ի հազար
ազգս։ * Եւ հատուցանէ ատելեաց 10
իւրոց յանդիման սատակել զնս. և ոչ
յամեցուսցէ յատելեաց. այլ յանդի_
ման հատուսցէ նց։ * Եւ պահեսցես 11
զպատուիրանս՝ և զիրաւունս՝ և զդա
տաստանս՝ զորս ես պատուիրեմ քեզ
առնել։ * Եւ եղիցի՝ յորժամ լուիցէք 12
զամ իրաւունս զայսոսիկ, և պահի_
ցէք՝ և առնիցէք զսոսա, պահեսցէ քեզ
Տր Ած քո զուխտն և զողորմութիւն՝
ոռ երդուաւ հարցն մերոց։ * Եւ սի 13
րեսցէ զքեզ՝ և օրհնեսցէ զքեզ. և
բազմացուսցէ զքեզ. և օրհնեսցէ զծ
ծնունդս որովայնի քոյ՝ և զպտուղ երկ
րի քոյ. զցորեան քո. և զգինի քո. և
զիւղ քո. զանդեայս արջառոց քոց. և
զհօտս ոչխարաց քոյ՝ յերկրին զոր եր
դուաւ Տր հարցն քոց տալ զնա քեզ։
* Օրհնեալ լիցիս դու քան զազգս 14
‖ Ելից. 23.26. ամենայն. ‖ մի լիցի ՚ի ձեզ ամուլ՝ և
անծնունդ. և մի յանասունս քո։
* Եւ բարձցէ ՚ի քէն Տր զամ ախտ. և 15
զամ ցաւս չարաչարս եգիպտացւոց.
զորս տեսերն՝ և զորս գիտացեր. և մի
ածցէ զնոսա ՚ի վր քո. այլ՝ ածցէ զնս
՚ի վերայ թշնամեաց քոց. և ՚ի վր ամ
ատելեաց քոց։ * Եւ կերիցես զամ 16
զկապուտ ազգացն՝ զորս Տր Ած քո
տացէ քեզ. և մի խնայեսցէ ակն քո ՚ի
նոսա. և ոչ պաշտեսցես զդիս նոցա.

17 զի խոչ է այն քեզ։ * Այպա թէ ասի_
ցես ՚ի մտի քում. զի բազում է ազգն
այն քան զիս՝ զիարդ կարացից սա_
18 տակել զնս։ * Մի երկնչիցիս ՚ի նո_
ցանէ. յիշելով յիշեսցես՝ զորինչ ա_
րար Տր Ած քո ընդ փարաւոն, և ընդ
ծառայս նորա՝ և ընդ ամ եգիպտա_
19 ցիսն։ * Զփորձանս մեծամեծս զորս
տեսին աչք քո. զնշանս և զարուեստս
մեծամեծս. զձեռն հզօր՝ և զբազուկն
բարձր. որպէս եհան զքեզ Տր Ած
քո անտի. նոյնպէս արասցէ Տր մեր
ընդ ամ ազգսն՝ յորոց դու երկնչիցիս
20 յերեսաց նոցա։ * ‖ Եւ զձիաստացն ‖ Ելից. 23.28.
առաքեսցէ Տր Ած քո ՚ի նոսա, մինչև
սատակեսցին մնացորդքն՝ և թաքու_ Յեսու. 24.12.
21 ցեալքն ՚ի քէն։ * Մի զանդիտիցես
յերեսաց նոցա. ‖ զի Տր Ած քո ՚ի միջի ‖ Ելից. 23.23. և 33.2.
22 քում է. մեծ և հզօր։ * Եւ ծախես_
ցէ Տր Ած քո զազգսն զայնոսիկ յերե
սաց քոց առ սակաւ սակաւ։ ոչ կարաս
ցես սատակել զնոսա վաղվաղակի. զի
մի լիցի երկիրն աւերակ. և բազմա_
նայցեն ՚ի վր քո գազանք անապատի։
23 * Եւ մատնեսցէ զնոսա Տէր Ած քո
՚ի ձեռս քո. և կորուսցէ զնոսա կորս
տեամբ մեծաւ. մինչև սատակեսցէ
24 զնոսա։ * Եւ մատնեսցէ զթագաւորս
նց ՚ի ձեռս ձեր. և կորուսջիք զանուն
նց ՚ի տեղւոջէն յայնմանէ. և մի ոք
կայցէ ընդդէմ քո. մինչև սատակես_
25 ցես զնոսա։ * ‖ Զդրօշեալս դից նց ‖ 2. Մակ. 12.40.
այրեսցես հրով. և մի ցանկանայցես
արծաթոյ և ոսկւոյ ՚ի նոցանէ՝ և մի
առնուցուս քեզ. և մի յանցանիցես
նովաւ. զի գարշելի է այն Տն Այ
26 քում։ * Եւ մի տանիցիս զգարշելին
՚ի տուն քո. և լինիցիս ՚ի նզովս իբրև
զնոյն. այլ գարշելով գարշեսցիս. և
պղծելով պղծեսցես զնա զի նզովեալ է։

## Գլ. Ը.

1 Զամենայն պատուիրանաց՝ զորս ես պատուիրեմ ձեզ այսօր, զգոյշ
լինիցիք առնելոյ. զի կեցջիք և բազմա
պատիկք լինիցիք. և մտանիցէք՝ և ժա
ռանգիցէք զերկիրն՝ զոր երդուաւ Տր
2 հարցն մերոց։ * ‖ Եւ յիշեսցես զամ ‖ Մայր. 29.5.
ճանապարհն՝ զոր եած զքեզ Տր զամս
քառասուն ընդ անապատն. զի լլկի_
ցէ զքեզ՝ և ճանաչիցէ՝ թէ զինչ կայ_
ցէ ՚ի սրտի քում. եթէ պահեսցես զզ
3 պատուիրանս նր՝ և թէ ոչ։ * Եւ չար
չարեաց զքեզ. և սովաբեկ արար զզ
քեզ՝ և կերակրեաց զքեզ մանանայ_
իւն՝ զոր ոչ գիտէիր. և ոչ գիտէին ‖ Մատթ. 4.4.
հարքն քո. զի յայտ արասցէ քեզ ‖ թէ
ոչ հացիւ միայն կեայ մարդ. այլ ամ ‖ Ղուկ. 4.4.
բա_

քանիւ, որ ելանէ 'ի բերանոյ այ, կեց֊
ցէ մարդ։ *Հանդերձք քո ոչ մաշե֊ 4
ցան 'ի քէն. և ոտք քո ոչ փապարեցին
զայն ամս քառասուն։ *Եւ ծանիցես 5
'ի սրտի քում. թէ որպէս այր ոք՝ որ խրա
տէ զորդի իւր՝ այնպէս Տէր Ա.Ծ քո
խրատեսցէ զքեզ ։ *Եւ պահեսցես 6
զպատուիրանս Տն Այ քոյ. գնալ 'ի
ճանապարհս նր. և երկնչել 'ի նմանէ։
*Զի Տր Ա.Ծ քո տարցի զքեզ յերկիրն 7
բարի և յաղթ. ուր վտակք ջրոց և
աղբիւրք անդնդոց բղխեն՝ ը դաշտս
և ընդ լերինս ։ *Երկիր ցորենոյ. և 8
գարւոյ՝ և գինւոյ. այգեաց և նռնե֊
նեաց. երկիր ձիթենեաց. իւղոյ և
մեղու։ *Երկիր՝ յորում ոչ աղքատու 9
թբ կերիցես զհաց քո, և ոչ կարօտա
նայցես ինչ 'ի նմա։ երկիր որոյ քա֊
րինք իւր երկաթ. և 'ի լերանց նորա
հատանիցես զպղինձ։ *Եւ կերիցես՝ 10
և յագեսցիս. և օրհնեսցես զՏր Ա.Ծ քո
'ի վերայ երկրին բարութե՝ զոր ետ
քեզ։ *Զգոյշ յանձն քո. գուցէ մո֊ 11
ռանայցես զՏր Ա.Ծ քո, չպահել զպատ
ուիրանս նր. և զդատաստանս՝ և զի֊
րաւունս նր՝ զորս ես քեզ պատուիրեմ։
*Գուցէ յորժամ ուտիցես՝ և յագի֊ 12
ցիս. և տունս գեղեցիկս շինեսցես՝ և
բնակեսցիս 'ի նոսա։ *Եւ բազմանայ 13
ցէ արջառ և ոչխար քո. և յաճախիցի
քեզ արծաթ և ոսկի. և ամ ինչ՝ որ
քո իցէ՝ բազմանայցէ ։ *Հպարտա֊ 14
նայցես 'ի սրտի քում. և մոռասցիս
զՏր Ա.Ծ քո՝ որ եհան զքեզ յերկրէն
եգիպտացւոց 'ի տանէ ծառայութե ։
*Եւ էած զքեզ ընդ անապատն մեծ 15
և ընդ ահագին։ ‖ ուր օձն խածանէր՝
և կարիճ. և ծարաւ՝ և ոչ գոյր ջուր.
‖ և եհան քեզ յապառաժ վիմէ զաղ֊
բիւր ջուրց։ *‖Որ կերակրեաց զքեզ 16
մանանայիւն յանապատին՝ զոր ոչ
գիտէին հարքն քո. զի չարչարեսցէ
զքեզ՝ և փորձեսցէ զքեզ. և բարի ա֊
րասցէ քեզ 'ի վախճանի քում։ *Մի 17
ասիցես 'ի սրտի քում. թէ զօրութի
իմ, և ուժգնութի ձեռին իմոյ արար
ինձ զզօրութիս զայս մեծ։ *Այլ յի 18
շեսցես զՏր Ա.Ծ քո. զի նա տայ քեզ
զոյժ առնել զզօրութի. զի հաստա
տեսցէ զուխտն իւր՝ զոր երդուաւ
հարցն քոց. որպ և այսօր։ *Եւ եղիցի 19
եթէ մոռանալով մոռասցիս զՏր Ա.Ծ
քո. երթայցես զհետ աստուծոց օտա
րաց. և պաշտիցես զնոսա. և երկիր
պագանիցես նոցա, ուխտ դնեմ ձեզ վկայ
այսօր զերկինս և զերկիր, զի կորս֊
տեամբ կորնչիցիք ։ *Որպ և ազգքն 20
զորս Տր կորուսցէ յերեսաց ձերոց.

‖ Թուոց 21.6.
‖ Ելից. 17.6.
‖ Ելից. 16.14.

այնպէս կորիջիք՝ փոխանակ զի ոչ
լուայք ձայնի Տեառն Այ ձերոյ։

ԳԼ: Թ.

1 Լուր Իսրայէլ. դու անցանես այսօր ը
Յորդանան. մտանել՝ և ժառան
գել զազգսն մեծամեծս և զօրագոյնս
քան զքեզ. և զքաղաքս մեծամեծս և
2 պարսպեալս մինչև յերկինս։ *Զժո֊
ղովուրդն մեծ և զբազում և զյաղթ
անդամ զորդիսն Ենակայ՝ զորս դու
իսկ գիտես. և լուար՝ եթէ ով կայցէ
3 ընդդէմ որդւոցն Ենակայ։ *Եւ ծա
նիցես այսօր՝ զի Տէր Ա.Ծ քո նա ինքն
երթայցէ առաջի քո՝ որ հուր ծախիչ
է՝ նա սատակեսցէ զնոսա. և նա կոր
ծանեսցէ զնոսա առաջի երեսաց քոց.
և սատակեսցէ զնս՝ և կորուսցէ զնս
վաղվաղակի. որպէս և ասաց քեզ Տր։
4 *Մի ասիցես 'ի սրտի քում 'ի ծախել
զնոսա Տն Այ քո յառաջոյ քումմէ՝
թէ վս արդարութե իմոյ էած զիս
Տր ժառանգել զերկիրս զայս բարի.
զի ոչ վասն արդարութե քոյ. այլ վս
ամպարշտութե ազգացն այնոցիկ սա
տակեսցէ զնոսա Տր Ա.Ծ քո յառաջոյ
5 քումմէ ։ *Բանզի ոչ վասն արդա֊
րութե քոյ՝ և ոչ վս ամբծութե սրտի
քոյ մտանես ժառանգել զերկիր նց.
այլ վս անօրէնութե ազգացն այնո֊
ցիկ Տր Ա.Ծ քո սատակեսցէ զնս յերե
սաց քոց. և զի հաստատեսցէ զուխտն՝
զոր երդուաւ Տր հարցն մերոց աբրա֊
համու՝ և իսահակայ՝ և յակոբայ ։
6 *Եւ ծանիցես այսօր՝ զի ոչ վասն ար
դարութե քո Տր Ա.Ծ քո տայցէ քեզ
զերկիրն բարի ժառանգել. զի ժողո֊
7 վուրդ խստապարանոց ես։ *Յիշեա,
մի մոռանայցես որչափ բարկացուցեր
զՏէր Ա.Ծ քո յանապատին. յօրէ յոր
մէ ելէք յերկրէն եգիպտացւոց. մինչև
եկիք 'ի տեղիս յայս. խեռութբ վա֊
8 րէիք 'ի Տնակողմն կոյս։ *‖Եւ 'ի քո֊
րեբ բարկացուցիք զՏէր. և բարկա֊
9 ցաւ Տր սատակել զձեզ։ *Յելանելն
իմում 'ի լեառն առնուլ զտախտակսն
քարեղէնս՝ զտախտակսն ուխտի. զոր
ուխտեաց Տէր ընդ ձեզ։ ‖ և եղէ 'ի
լերինն զքառասուն տիւ և զքառա֊
սուն գիշեր. զհաց ոչ կերի և ջուր ոչ
10 արբի։ *Եւ ետ ինձ Տէր‖ զերկոսին
տախտակսն քարեղէնս գրեալս մա֊
տամբն այ. և 'ի նոսա գրեալ էին ամ
պատգամքն՝ զորս խօսեցաւ Տէր ընդ
ձեզ 'ի լերինն յաւուրն եկեղեցւոյ։
11 *Եւ եղև յետ քառասուն տուընջեան
և քառասուն գիշերոյ. ետ ինձ Տէր
զերկուս տախտակսն քարեղէնս. տախ
տակս

‖ Ելից. 17.6. և 19.3. և 31. 18. և 32.15
‖ Ելից. 24. 18. և 34.28
‖ Ելից. 31.18.

տակս ուխտի։ 12 * Եւ ասէ ցիս Տէր։ Արի էջ վաղվաղակի աստի. զի անօրինեցաւ ժողովուրդն քո՝ զոր հաներ յերկրէն Եգիպտացւոց. անցին արագ ՚ի ճանապարհէն՝ զոր պատուիրեցեր նոցա. և արարին իւրեանց ձուլածոյս։ 13 * Եւ ասէ ցիս Տր. խօսեցայ ընդ քեզ միանգամ և երկիցս՝ և ասեմ. տեսի զժողովուրդդ զայդ. և ահա ժողովուրդ խստապարանոց է։ 14 * Թոյլ տուր ինձ սատակել զդոսա. և ջնջեցից զանուն դոցա ՚ի ներքոյ երկնից. և արարից զքեզ յազգ մեծ՝ և ՚ի հզօր՝ և ՚ի բազում, առաւել քան զայդ։ 15 * Եւ դարձեալ իջի ՚ի լեռնէ անտի. և լեառն բորբոքէիւր հրով. և երկու տախտակքն յերկոսին ՚ի ձեռս իմում։ 16 * Եւ տեսեալ եթէ մեղայք առաջի Տն Այ մերոյ. և արարէք ձեզ ձուլածոյս. և անցէք զճանապարհաւն՝ զոր պատուիրեաց Տր։ 17 * Առեալ զերկուսին տախտակսն ՚ի ձեռաց իմոց՝ խորտակեցի յանդիման ձեր։ 18 * Եւ աղաչեցի առաջի Տն կրկին անգամ իբրև զառաջինն. զքառասուն տիւ և զքառասուն գիշեր՝ զհաց ոչ կերի և զջուր ոչ արբի. վն ամ մեղաց ձերոց՝ զորս մեղայք. առնել զչար առաջի Տն Այ մերոյ. բարկացուցանել զնա։ 19 * Եւ զահի հարեալ եմ վասն բարկութեն և սրտմտութե. զի բարկացաւ Տր ՚ի վերայ ձեր սատակել զձեզ։ և լուաւ ինձ Տէր և ՚ի ժամանակի յայնմիկ։ 20 * Եւ ահարոնի բարկացաւ Տէր յոյժ սատակել զնա. և արարի աղօթս և վն Ահարոնի ՚ի ժամանակի յայնմիկ։ 21 * Եւ զմեղսն ձեր՝ զոր արարէք՝ զորթն առի՝ և այրեցի զնա հրով. և կոտորեցի՝ և խորտակեցի զնա յոյժ. մինչև եղև մանր իբրև զփոշի. և ընկեցի զփոշին ՚ի վտակն՝ որ իջանէր ՚ի լեռնէ անտի։ 22 * Եւ ՚ի Հրայրեացն. և ՚ի փորձութեն. և ՚ի գերեզմանս ցանկութեն բարկացուցէք զՏէր Այ ձեր։ 23 * Եւ յորժամ առաքեաց զձեզ Տէր ՚ի կադէսբառնեայ. ասէ՝ ելէք և ժառանգեցէք զերկիրն՝ զոր տալոց եմ ձեզ. հեստեցէք բանին Տն Այ ձերոյ. և ոչ հաւատացէք նմա. և ոչ լուայք ձայնի Տն։ 24 * Օի հեստեալ կայք ՚ի Տնականողմանն. յօրէ յորմէ ծանուցաւ ձեզ։ 25 * Եւ աղաչեցի առաջի Տն զքառասուն տիւ և զքառասուն գիշեր, զորս աղաչեցի. քանզի ասաց Տր սատակել զձեզ։ 26 * Եւ կացի յաղօթս առ Տր և ասեմ. Տէր Տէր. թագաւոր աստուծոց. մի սատակեր զժողովուրդ քո և զբաժին քո՝ զոր փրկեցեր զօրութբ քով մեծաւ։ զորս հաներ յեգիպտոսէ զօրութբ քո մեծաւ. և կարող ձեռամբ՝ և բարձր բազկաւ։ 27 * Յիշեա դու զաբրահամ, և զիսահակ՝ և զյակոբ՝ զծառայս քո. որոց երդուար քև։ մի հայիր ՚ի խստութի ժողովրդեանդ այդորիկ. և յամպարշտութիս՝ և ՚ի մեղս դոցա։ 28 * Եւ դուցէ խօսիցին բնակիչք երկրին՝ ուստի հաներ զմեզ. և ասիցեն. առ ՚ի չկարելոյ Տն տանել զնոսա յերկիրն՝ զոր խոստացաւ նոցա. և առ ատել զնս Տն եհան զնոսա՝ կոտորել զնոսա յանապատին։ 29 * Եւ սոքա ժողովուրդ քո՝ և ժառանգութի քո՝ զոր հաներ յերկրէն Եգիպտացւոց զօրութբ քով մեծաւ՝ և բարձր բազկաւ։

Ել. 32.7. — Ել. 17.7. Թուոց. 11.1. և 16.1. և 21.5. — Թուոց 14.16.

## Գլ: Ժ։

1 Ի ժամանակին յայնմիկ ասաց ցիս Տէր. կոփեա դու քեզ երկուս տախտակս քարեղէնս իբրև զառաջինսն. և ել ՚ի լեառն. և արասցես դու քեզ տապանակ փայտեղէն։ 2 * Եւ գրեցից ՚ի տախտակսն զնոյն պատգամս՝ որք էին յառաջին տախտակսն՝ զորս դուն խորտակեցեր. և դիցես զնոսա ՚ի ներքս ՚ի տապանակին։ 3 * Եւ արարի տապանակ յանփուտ փայտից. և կոփեցի երկուս տախտակս քարեղէնս իբրև զառաջինսն. և ելի ՚ի լեառն. և երկու տախտակքն յերկոսին ՚ի ձեռս իմում։ 4 * Եւ գրեաց յերկոսին տախտակսն ըստ առաջնոյ գրոյն զտասն պատգամսն՝ զորս խօսեցաւ ընդ ձեզ Տր ՚ի լերին ՚ի միջոյ հրոյն. և ետ զնս ցիս Տր։ 5 * Եւ դարձայ իջի ՚ի լեռնէ անտի. և եդի զտախտակսն ՚ի ներքս ՚ի տապանակին. և էին անդ որպէս և պատուիրեաց ինձ Տր։ 6 * Եւ որդիքն Իէլի չուեցին ՚ի բերոթայ որդւոցն յակիմայ ՚ի մոսադայի. և անդ մեռաւ ահարոն՝ և անդէն թաղեցաւ. և քահանայացաւ եղիազար որդի նորա ընդ նորա։ 7 * Անտի չուեցին ՚ի գադգադ. և ՚ի գադգադայ յետակայ յերկիր վտակաց ջուրց։ 8 * Յայնմ ժամանակի զատոյց Տէր զցեղն ղևեայ բառնալ զտապանակ ուխտին Տն. կալ առաջի Տն՝ պաշտել և աղօթս մատուցանել յանուն նորա մինչև ցայսօր։ 9 * Վասն այնորիկ ոչ գոյ ղևտացւոցն բաժին և ժառանգութի ՚ի մէջ եղբարց իւրեանց. զի Տր ինքնին է մասն և ժառանգութի նոցա՝ ոպ և ասաց նոցա։ 10 * Եւ ես կացի ՚ի լերինն զքառասուն տիւ և զքառասուն գիշեր. և լուաւ ինձ Տր ՚ի ժամանակին յայնմիկ.

Ելից 34.1. — Թուոց 33.31. — Թուոց 20.28. և 29. — Թուոց 18.20. Սիր. 18.2.

մին. և ոչ կամեցաւ սատակել զձեզ։ 11 *Եւ ասէ ցիս Տր՝ գնա՛ չուեա առաջի ժողովրդեանդ այդորիկ. և մտցեն և ժառանգեսցեն զերկիրն՝ զոր երդուայ հարցն դոցա տալ դոցա։ 12 *Եւ արդ Իէլ. զի՞նչ խնդրէ 'ի քէն Տր Ած քո. այլ երկնչել 'ի Տէ Այ քումմէ. և գնալ յամենայնի ճանապարհս նր և սիրել զնա. և պաշտել զՏէր Ած քո յամենայն սրտէ քումմէ. և յամենայն անձնէ քումմէ։ 13 *Եւ պահել զպատուիրանս Տն Այ քոյ. և զիրաւունս նորա՝ զոր ես պատուիրեմ քեզ այսօր. զի բարի լիցի քեզ։ 14 *Ահաւասիկ Տն Այ քոյ երկինք՝ և երկինք երկնից. երկիր և ամ որ է 'ի նմա։ 15 *Բայց ընդ հարսն ձեր յառաջագոյն հաճեցաւ Տր սիրել զնոսա. և ընտրեաց զզաւակ նոցա յետ նոցա զձեզ քան զազգս ամ ըստ աւուրս ըստ այսմիկ։ 16 *Եւ թլփատեցէք զխստասրտութի ձեր. և զպարանոցս ձեր մի ևս խստացուցանիցէք։ 17 *Զի Տր Ած մեր՝ նա է Ած աստուածոց՝ և Տէր տերանց. Ած մեծ՝ և հզօր՝ և ահաւոր. որ ո՛չ աչառէ երեսաց. և ո՛չ առնու կաշառ։ 18 *Առնէ իրաւունս եկին՝ և որբոյ՝ և այրւոյ. սիրէ զնժդեհն. տալ նմա հաց և հանդերձ։ 19 *Եւ սիրեցէք զպանդուխտն. զի և դուք պանդուխտք էիք յերկրին Եգիպտացւոց։ 20 *ԶՏէ Ած քումմէ երկիցես. և զնա պաշտեսցես. և 'ի նա յարեսցիս. և յանուն նորա երդնուցուս։ 21 *Զի նա է պարծանք քո. և նոյն Ած քո, որ արար 'ի քեզ զմեծամեծսն և զփառաւորս՝ զորս տեսին աչք քո։ 22 *Եօթանասուն ոգւովք իջին հարքն քո յԵգիպտոս՝ և արդ ահա արար զքեզ Տր Ած քո իբրև զաստեղս երկնից բազմութեամբ։

Ծնն. 12.1? 19.7. Յես. 34. 19. Ղևտ. 6. 8. Սիրաք. 35.15. Գործ. 10. 34. Հռովմ. 2. 11. Գաղատ. 2. 6. Եփես. 6.13. Կող. 4.10. Պետ. 4. 8. Ծննդ. 46.27. Ելից. 1. 5.

## Գլ: ԺԱ.

1 Եւ սիրեսցես զՏէր Ած քո. և պահեսցես զպահպանութիւնս նորա և զիրաւունս նորա՝ և զպատուիրանս նորա զամ աւուրս կենաց քոց։ 2 *Եւ ծանիջիք այսօր՝ եթէ ոչ վս որդւոց քոց՝ որք ոչ գիտեն՝ և ոչ տեսին զխրատ Տն Այ քոյ. և զմեծամեծս նր. զձեռն հզօր. և զբազուկ բարձր։ 3 *Զնշանս նորա և զարուեստս՝ զորս արար 'ի մէջ Եգիպտոսի 'ի փարաւոն արքայ Եգիպտացւոց. և յամենայն երկիր նր։ 4 *Եւ զորինչ արար զօրսն Եգիպտացւոց՝ զկառս նոցա և զերիվարս իւրեանց. որպէս ծփեաց զջուրս կարմիր ծովուն 'ի վերայ երեսաց նոցա. 'ի յարձակել նց զկնի մեր. կորոյս զնոսա Տէր մինչև

Իբ

5 ցայսօր ժամանակի։ *Եւ զորինչ արար ձեզ յանապատի անդ՝ մինչև եկիք 'ի տեղիս յայս։ 6 *Եւ զորինչ արար ընդ դաթան և ընդ աբիրոն՝ ընդ որդիս եղիաբու որդւոյ ռուբենի. որոց բացեալ երկրի զբերան իւր՝ եկուլ զնս՝ և զտունս նոցա՝ և զվրանս նց. և զամ ինչս նց ընդ նոսա 'ի մէջ ամենայն Իէլի։ 7 *Զի ձեր իսկ աչք տեսին զամենայն զգործս Տն զմեծամեծս՝ զորս արար 'ի ձեզ մինչև ցայսօր։ 8 *Եւ պահեցէք զամ պատուիրանս նորա՝ զոր ես պատուիրեմ ձեզ այսօր. զի կեցջիք և բազմապատիկք լինիցիք՝ և մտանիցէք. և ժառանգիցէք զերկիրն՝ յոր դուք անցանէք ընդ յորդանան ժառանգել զնա։ 9 *Զի երկայնօրեայք լինիցիք 'ի վր երկրին՝ զոր երդուաւ Տէր հարցն ձերոց տալ նց. և զաւակի նոցա յետ նց՝ երկիր որ բղխէ զկաթն և զմեղր։ 10 *Քանզի երկիրն յոր մտանելոց էք ժառանգել զնա, ոչ իբրև զերկիրն Եգիպտացւոց է ուստի ելէք դուք՝ յորժամ սերմանեն սերմանս. և ռոգանեն ոտիւք իբրև զպարտէզ բանջարոյ։ 11 *Այլ երկիրն՝ յոր դուք մտանելոց էք ժառանգել՝ երկիր լեռնային և դաշտական է. յանձրևոյ երկնից ըմպէ զջուր։ 12 *Երկիր՝ զոր Տէր Ած քո դարմանէ զնա հանապազ՝ աչք Տն Այ քոյ 'ի վերայ նորա 'ի սկզբանէ տարւոյն մինչև ցկատարումն տարւոյն։ 13 *Եւ եթէ լսելով լուիցես ամ պատուիրանաց նորա՝ զորս ես պատուիրեմ քեզ այսօր, սիրել զՏէր Ած քո՝ և պաշտել զնա յամենայն սրտէ քումմէ, և յամ անձնէ քումմէ։ 14 *Տացէ զանձրև երկրին ձերում 'ի ժամանակի իւրում զկանուխ և զանագան. և ժողովեսցես զցորեան քո և զգինի քո՝ և զիւղ քո։ 15 *Եւ տացէ խոտ յանդս քո անասնոյ քում. և կերիցես՝ և յագեսցիս։ 16 *Զգուշացարո՛ւք յանձինս ձեր. գուցէ յուլանայցէ սիրտք ձեր՝ և յանցանիցէք, և պաշտիցէք զաստուածս օտարս. և երկիրպագանիցէք նոցա։ 17 *Եւ սրտմտեալ բարկանայցէ Տէր 'ի վերայ ձեր. և արգելուցու զերկինս՝ և ոչ լինիցի անձրև. և երկիր ոչ տացէ զպտուղ իւր՝ և կորնչիցիք արագ արագ յերկրէն բարւոյ զոր ետ ձեզ Տէր։ 18 *Եւ դիջիք զբանս զայսոսիկ 'ի սիրտս ձեր. և յանձինս ձեր. և արկջիք զսոսա նշան 'ի ձեռս ձեր. և եղիցին անշարժք առաջի աչաց ձերոց։ 19 *Եւ ուսուսջիք որդւոց ձերոց խօսել զսոսա 'ի նստել 'ի տան՝ և 'ի գնալ 'ի ճանապարհի. և 'ի ննջել և 'ի յառ-

Թուոց 16.1. և 31. Սաղմ. 105.17. Թուոց 16.32. Օրին. 10.12. Օրին. 6. 6.

յառնել : 20 *Եւ գրեսջիք զսոսա 'ի վր̃ սեմոց տանց ձերոց՝ և 'ի դրունս ձեր : 21 *Զի բազմօրեայք լինիցիք . և աւուրք որդւոց ձերոց 'ի վերայ երկրին՝ զոր երդուաւ Տր հարցն քոց տալ քեզ՝ ըստ աւուրց երկնից 'ի վերայ երկրի : 22 *Եւ եղիցի եթէ լսելով լուիցէք զամ պատուիրանաց այսոցիկ՝ զորս ես պատուիրեմ ձեզ այսօր առնել, սիրել զՏր Ա.ծ քո . գնալ 'ի ճանապարհս նր՝ և յարել 'ի նա : 23 *Մերժեսցէ Տէր զազգսն զայնոսիկ յերեսաց ձերոց . և ժառանգեսջիք զազգս մեծամեծս և հզօրագոյնս քան զձեզ : 24 *Ամենայն տեղի ուր կոխիցեն գնացք ոտից ձերոց՝ ձեզ լիցի . յանապատէ անտի մինչև ցանտերն Լիբանանու . և 'ի գետոյն մեծէ գետոյն Եփրատայ մինչև ցծովն արևմտից եղիցին սահմանք ձեր : 25 *Եւ ոչոք դառնայցէ ընդդէմ ձեր . զահ և զերկիւղ ձեր արկցէ Տր Ա.ծ ձեր 'ի վերայ երեսաց ամ երկրին՝ զոր կոխիցէք . որպ խօսեցաւ ընդ ձեզ Տէր :
26 *Եւ ես աւասիկ տամ այսօր առաջի ձեր զօրհնութի, և անէծս : 27 *Օրհնութի, եթէ լսիցէք պատուիրանաց Տն Ա.յ ձերոյ՝ զորս ես պատուիրեմ ձեզ այսօր : 28 *Եւ անէծս, եթէ ոչ լուիցէք պատուիրանաց Տն Ա.յ ձերոյ . զորս ես պատուիրեմ ձեզ այսօր . և մոլորիցիք 'ի ճանապարհէն՝ զոր ես պատուիրեցի ձեզ . երթալ և պաշտել զաստուածս օտարս՝ զորս ոչ ճանաչիցէք :
29 *Եւ եղիցի յորժամ տարցի զքեզ Տր Ա.ծ քո յերկիրն՝ յոր անցանես դու յորդանան ժառանգել զնա . և տացես դու զօրհնութին 'ի լերինն Գարիզին, և զանէծս 'ի լերինն Գեբաղ : 30 *Ոչ ապաքէն յայնկոյս յորդանանու է այն՝ յետոյ ճանապարհին արևմտից յերկրին քանանացւոց . որոյ նիստն է արևմուտս է մերձ 'ի Գաղգաղ՝ առ կաղնեաւն բարձու : 31 *Եւ դուք անցանէք ընդ յորդանան՝ մտանել և ժառանգել զերկիրն՝ զոր Տր Ա.ծ տալոց է ձեզ 'ի ժառանգութի զամենայն աւուրս . և ժառանգեսջիք զնա՝ և բնակեսջիք 'ի նմա : 32 *Եւ զգուշասջիք առնել զամենայն հրամանս նորա՝ և զդատաստանս զայսոսիկ՝ զորս ես տամ առաջի ձեր այսօր :

Յեսու. 1. 3.

Աստր. 27. 12.

## ԳԼ: ԺԲ:

1 Եւ այսոքիկ են հրամանք և դատաստանք՝ զորս զգուշանայցէք առնել յերկրին՝ զոր Տէր Ա.ծ հարցն ձերոց տալոց է ձեզ 'ի ժառանգութի . զամ աւուրս՝ զորս կեցցէք դուք 'ի վր̃ երկրի : 2 *Կորուսանելով կորուսջիք զամենայն տեղիսն՝ յորս պաշտեցին 'ի նոսա ամ ազգքն զդիս իւրեանց՝ յորս դուք ժառանգիցէք զնոսա . 'ի վերայ լերանց բարձանց . և 'ի վերայ բլրոց . 'ի ներքոյ վարսաւոր ծառոյ : 3 *Եւ կործանեսջիք զբագինս նց . և փշրեսջիք զարձանս նց . կոտորեսջիք զանտառս նց . և զդրօշեալս դից նց այրեսջիք հրով՝ և կորուսջիք զանուանս նց 'ի տեղւոջէն յայնմանէ : 4 *Եւ մի առնիցէք նոյնպէս Տն Ա.յ ձերում : 5 *Այլ 'ի տեղւոջն՝ զոր ընտրեսցէ Տր Ա.ծ ձեր 'ի միում 'ի ցեղից ձերոց, անուանել զանուն իւր և կոչել 'ի նմա՝ խնդրեսջիք՝ և մտջիք անդր : 6 *Եւ մատուսջիք զողջակէզս ձեր՝ և զզոհս ձեր . և զտասանորդս ձեր . և զպտուղս ձեր . և զուխտս ձեր . և զկամայականս ձեր . և զխոստովանութիւնս ձեր . և զանդրանիկս արջառոյ և ոչխարի ձերոյ : 7 *Եւ կերիջիք առաջի Տն Ա.յ ձերոյ . և ուրախ լինիջիք 'ի վերայ ամի յոր մխիցէք զձեռս ձեր . դուք և տունք ձեր՝ որպ և օրհնեաց զքեզ Տր Ա.ծ քո : 8 *Մի առնիցէք զամ ինչ՝ զոր այսօր մեք աստ առնեմք, իւրաքանչիւր զհաճոյն առաջի իւր : 9 *Քանզի ոչ հասիք 'ի հանգիստն և 'ի ժառանգութին՝ զոր Տր Ա.ծ մեր տալոց է ձեզ մինչև ցայսօր : 10 *Եւ անցջիք ընդ յորդանան և բնակեսջիք յերկրին՝ զոր Տէր Ա.ծ մեր ժառանգեցուսցէ ձեզ . և հանգուսցէ զձեզ յամ թշնամեաց ձերոց՝ որք շուրջ զձեօք իցեն . և բնակեսջիք զգուշութե : 11 *Եւ եղիցի տեղին՝ զոր ընտրեսցէ Տէր Ա.ծ մեր կոչել զանուն իւր 'ի վերայ նր, անդ մատուսջիք զամ՝ զոր ես պատուիրեմ ձեզ այսօր . զողջակէզս ձեր, և զզոհս ձեր, և զտասանորդս ձեր . և զպտուղս ձեռաց ձերոց . և զդահամուտս . և զամ ընտիրս պատարագաց ձերոց՝ զորս ուխտիցէք Ա.յ ձերում : 12 *Եւ ուրախ լինիջիք առաջի Տն Ա.յ մերոյ՝ դուք՝ և ուստերք ձեր՝ և դստերք ձեր . և ծառայք, և աղախնայք ձեր . և ղևտացին որ 'ի դրունս ձեր . զի ոչ գոյ նոցա բաժին՝ և ոչ ժառանգութի ը ձեզ : 13 *Զգոյշ լեր անձին քում՝ գուցէ մատուցանիցես զողջակէզս քո յամենայն տեղւոջ՝ զոր տեսանիցես : 14 *Այլ 'ի տեղւոջն՝ զոր ընտրեսցէ Տր Ա.ծ քո իւր՝ 'ի միում 'ի քաղաքաց քոց՝ անդ մատուցանիցես զողջակէզս քո . և անդ արասցես զամ՝ զոր ես պատուիրեմ քեզ այսօր : 15 *Այլ և ըստ ամ ցանկութե քում զենցես՝ և ուտիցես զմիս

Ել. 7. 5. և 25. 2. Մակ. 12. 40.

զմիս ըստ օրհնութեան Տն Այ քոյ՝ զոր ետ քեզ յամ քաղաքս. անսուրբն որ 'ի քեզ և սուրբն՝ 'ի միասին կերիցեն զայն. իբրև զայծեամն և զեղջերու։ 16 *Բայց զարիւն մի՛ ուտիցէք, այլ յերկիր հեղուցուք զնա իբրև զջուր։ 17 *Մի՛ ժտիցես ուտել 'ի քաղաքս քո զտասանորդս ցորենոյ քոյ. զանդրանիկս արջառոյ քոյ և զոչխարի. և զամ ուխտս՝ զոր ուխտիցէք՝ և զխոստովանութիւնս ձեր. և զպտուղս ձեռաց ձերոց։ 18 *Այլ առաջի Տն Այ քոյ կերիցես զայն՝ 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տէր Ած քո՝ իւր. դու և ուստր քո և դուստր քո՝ և ծառայն քո և աղախին քո. և Ղևտացին, որ 'ի քաղաքս քո. և ուրախ լինիցիս առաջի Տն Այ քոյ 'ի վերայ ամի յոր մխիցես զձեռն քո։ 19 *Զգոյշ լեր անձին քում. գուցէ թողուցուս զՂևտացին զամ ժամանակս քո՝ որչափ և կեցցես 'ի վր երկրին։ 20 *‖Եւ եթէ ընդարձակեսցէ Տէր Ած քո զսահմանս քո՝ որպէս և խոստացաւ քեզ. և ասիցես թէ կերայց զմիս՝ եթէ ցանկասցէ անձն քո ուտել զմիս. ըստ ամի ցանկութեան անձին քոյ կերիցես միս։ 21 *Ապա թէ հեռագոյն իցէ 'ի քէն տեղին՝ զոր ընտրեսցէ Տր Ած քո անուանել զանուն իւր 'ի վր նր. և զենուցուս յարջառոյ քումմէ և յոչխարէ քումմէ՝ յորոց տացէ քեզ Ած. զորօրինակ պատուիրեցի քեզ, կերիցես 'ի քաղաքս քո ըստ ցանկութեան անձին քոյ։ 22 *Որպէս ուտիցի այծեամն և եղջերու, այնպէս կերիցես և զայն. անսուրբն 'ի քեզ՝ և սուրբն նոյնպէս կերիցեն։ 23 *Զգոյշ լեր չուտելոյ զարիւն. զի արիւն նորա է շունչ իւր. մի՛ ուտիցես զշունչ մսոյ։ 24 *Յերկիր հեղուցուս զնա իբրև զջուր։ 25 *Եւ մի՛ ուտիցես զնա. զի բարի լինիցի քեզ. և որդւոց քոց յետ քո՝ եթէ արասցես զբարին և զհաճոյն առաջի Տն Այ քոյ։ 26 *Բայց զսրբութիւնս քո՝ որք լինիցին քեզ. և զուխտսն քո՝ զորս ուխտիցես՝ առեալ եկեսցես 'ի տեղին՝ զոր ընտրեսցէ Տր Ած քո իւր. կոչել զանուն իւր 'ի վր նր։ 27 *Եւ արասցես զողջակէզսն քո. զմիսն հանցես 'ի վր սեղանոյ Տն Այ քոյ. և զարիւն զոհիցն հեղուցուս առ յատակաւ սեղանոյ Տն Այ քոյ. և զմիսն կերիցես։ 28 *Զգոյշ լեր՝ և լուր. և արասցես զամ զբանս՝ զորս ես պատուիրեմ քեզ. զի բարի լիցի քեզ. և որդւոց քոց յաւիտեան. և արասցես զբարին և զհաճոյն առաջի Տն Այ քոյ։ 29 *‖Եւ եթէ սատակեսցէ Տր Ած քո զազգսն յերեսաց քոց. յոր դու մտանելոց ես ժառանգել զերկիր նոցա. և ժառանգեսցես զնոսա. և բնակեսցես յերկրի նոցա։ 30 *Զգոյշ լեր անձին քում. գուցէ խնդրիցես երթալ զհետ նոցա յետ սատակելոյ զնոսա յերեսաց քոց. մի՛ քննիցես զդիս նց՝ և ասիցես. զիարդ առնիցեն ազգքս այսոքիկ դիցն իւրեանց՝ 31 զի և ես արարից Տն։ *Մի՛ առնիցես նոյնպէս Տն Այ քում. զի զգարշելիսն՝ զորս ատեայ Տր՝ արարին դիցն իւրեանց. զի զուստերս իւրեանց և զդստերս՝ այրեն հրով դիցն իւրեանց։ 32 *‖Ամ բանի՝ զոր ես պատուիրեմ քեզ այսօր, զգուշանայցես առնելոյ. մի՛ յաւելուցուս 'ի նա, մի՛ հատանիցես 'ի նմանէ։

‖Ծնն. 28. 14. Ելից. 34. 24. ‖Մատ. 19. 8. ‖Մատ. 19. 1. ‖Մէր. 4. 2. Առակ. 30. 6.

## ԳԼ: ԺԳ:

1 Եւ եթէ յառնիցէ 'ի միջի քում մարգարէ կամ երազահան երազոյ՝ և տացէ քեզ զնշան կամ արուեստ։ 2 *Եւ լինիցի նշանն կամ արուեստն՝ զորս խօսեցաւ առ քեզ. և ասիցէ՝ երթիցուք պաշտեսցուք զաստուածս օտարս՝ զորս ոչ ճանաչիցէք։ 3 *Մի՛ լսիցէք բանից մարգարէին այնորիկ. կամ երազահանին երազոյ. զի փորձէ զձեզ Տէր Ած ճանաչել՝ թէ սիրիցէք զՏր Ած մեր յամ սրտէ ձերմէ՝ և յամենայն անձնէ ձերմէ։ 4 *Զկնի Տն Այ ձերոյ երթիջիք. և 'ի նմանէ երկնչիջիք. և զպատուիրանս նորա պահեսջիք. և ձայնի նորա լուիջիք. և 'ի նա յարեսջիք։ 5 *Եւ մարգարէն այն՝ կամ երազահանն երազոյ մեռցի. զի խօսեցաւ ապստամբեցուցանել զքեզ 'ի Տէ այ քումմէ՝ որ եհան զքեզ յերկրէն եգիպտացւոց. որ փրկեաց զքեզ յերկրէն ծառայութեան. մերժել զքեզ 'ի ճանապարհէն՝ զոր պատուիրեաց քեզ Տէր Ած քո գնալ ընդ նա. և բարձցես զչարն 'ի միջոյ ձերմէ։ 6 *Եւ եթէ աղաչեսցէ զքեզ եղբայր քո առ 'ի հօրէ՝ կամ առ 'ի մօրէ քումմէ. կամ ուստր քո. կամ դուստր քո. կամ կին ծոցոյ քոյ. կամ բարեկամ հանգոյն անձին քոյ՝ գաղտ՝ և ասիցէ. երթիցուք՝ և պաշտեսցուք զաստուածս օտարս՝ զորս ոչ ճանաչիցես դու՝ և հարք քո։ 7 *Յաստուածոց ազգացն՝ որք շուրջ զձեօք իցեն, 'ի մերձաւորացն քոց կամ 'ի հեռաւորաց, 'ի ծագաց երկրին մինչև 'ի ծագս երկրին։ 8 *Մի՛ հաւանիցիս նմա. և մի՛ լուիցես նմա. և մի՛ խնայեսցէ ակն քո 'ի նա. և մի՛ գթասցիս 'ի նա. և մի՛ ծածկեսցես զնա։ 9 *Պատմելով պատմեսցես զնմանէ. ‖ձեռք քո նախ լիցին 'ի նա սպանանել ‖Մատ. զնա. և ապա ձեռն ամ ժողովրդեանն։ 17. 7.

* Եւ քարկոծեսցեն զնա քարամբք՝ և մեռցի. զի խնդրեաց ապստամբեցուցանել զքեզ 'ի Տէ Այ քումմէ. որ եհան զքեզ յերկրէն եգիպտացւոց՝ 'ի տանէ ծառայութե. * Եւ լուեալ ամ Իղի զարհուրեսցի. և ոչ ևս յաւելցին առնել ըստ բանին այնորիկ չարի 'ի միջի ձերում. * Եւ եթէ լուիցես 'ի միում 'ի քաղաքացն՝ զորս Տր Ած քո տացէ քեզ բնակել անդ. ասել. * Եթէ ելին արք անօրէնք 'ի մէնջ. և ապստամբեցուցին զամ՝ բնակիչս քաղաքին իւրեանց. և ասեն՝ երթիցուք և պաշտեսցուք զաստուածս օտարս՝ զորս ոչ գիտէիք. * Եւ քննեսցես՝ և հարցցես՝ և յուզեսցես յոյժ. և ահա ստոյգ հաւաստեաւ իցէ բանն. և եղեալ իցէ գարշութիւն 'ի ձեզ. * Կոտորելով կոտորեսջիք զամ բնակիչս երկրին այնորիկ կոտորմամբ սրոյ. և նզովելով նզովեսջիք զնա. և զամ ինչ որ 'ի նմա. և զանասուն նր 'ի բերան սրոյ. * Եւ զամ կապուտ նր ժողովեսցես յելս նր. և այրեսցես հրով զքաղաքն, և զամ զաւար նորա համօրէն առաջի Տն Այ քոյ. և եղիցի աւերակ յաւիտեան. և ոչ ևս շինեսցի. * Եւ մի կռուիցի 'ի ձեռին քում 'ի նզովից նր. զի դարձցի Տէր 'ի բարկութէ սրտմտութե իւրոյ. և տացէ քեզ զողորմութի. և ողորմեսցի քեզ. և բազմացուսցէ զքեզ. զոր օրինակ երդուաւ Տր հարցն քոց. * Եթէ լուիցես ձայնի Տն Այ քոյ. պահել զամ պատուիրանս նր. զորս ես քեզ պատուիրեմ այսօր. առնել զբարին և զհաճոյն առաջի Տն Այ քոյ.

## ԳԼ. ԺԴ.

Որդիք էք դուք Տն Այ ձերոյ. մի ցոլիցէք. և մի հարկանիցէք զճակատ 'ի վերայ մեռելոյ. * Զի ժողովուրդ ես դու սր Տն Այ քոյ. և զքեզ ընտրեաց Տէր Ած քո լինել նմա ժողովուրդ սեպհական՝ յամենայն ազգաց որ 'ի վր երեսաց երկրի. * Մի ուտիցէք զամ գարշելիս. * Այսոքիկ անասունք են՝ զորս ուտիցէք, արջառ և ոչխար 'ի հօտից. և նոխազ յայծեաց. * Զեղջերու. և զայծեամն. և զգոմէշ. զխարբուզ. և զայծքաղ. և զյամոյր. և զանալութ. * Եւ զամ անասուն զթաթահերձ՝ և զկճղակաբաշխ՝ և զորոճող՝ յանասնոց ուտիցէք. * Եւ զայնոսիկ մի ուտիցէք՝ որք որոճեն՝ և թաթահերձք՝ և կճղակաբաշխք ոչ իցեն. ուղտ. և նապաստակ. և ճագար. զի որոճեն. և կճղակահերձք ոչ են. անսուրբ իցեն նոքա ձեզ. * Եւ խոզ. զի թաթահերձ և կճղակաբաշխ է. և որոճէ ոչ. անսուրբ իցէ նա ձեզ. 'ի մսոյ նոցա մի ուտիցէք. և 'ի մեռեալ նոցա մի մերձենայցէք. * Եւ այսոքիկ են՝ զորս ուտիցէք յամէ՝ որք 'ի ջուրս են. զամ որոյ իցեն թեւք՝ և թեփք ուտիցէք. * Եւ զամ որոյ ոչ իցեն թեւք՝ և թեփք մի ուտիցէք. անսուրբ իցեն նոքա ձեզ. * Զամենայն հաւ սուրբ ուտիցէք. * Եւ այս է զոր ոչ ուտիցէք 'ի նոցանէ. զարծուի. և զկորչ. և զանգղ. * Եւ զգետարծուի. և զցին. և որինչ նման է նմա. * Եւ զորի՝ և որինչ նման իցէ նմա. * Եւ զջայլամն. և զբու. և զճայ. * Եւ զարագիլ. և զփոր. և զհողամաղ. * Եւ զքաջահաւ. և զսոխակ. և զագռաւ. * Եւ զհաւալուսն. և զքաղաղդ. և որինչ նման է նոցա. և զյոպոպ. և զչղջիկ. * Եւ ամ սողուն 'ի թռչնոց անսուրբ լիցի ձեզ. և մի ուտիցէք 'ի նոցանէ. * Եւ զամ թռչուն սր կերիջիք. * Եւ զամ մեռելոտի մի ուտիցէք. այլ պանդխտին՝ որ է 'ի քաղաքս քո՝ տացես զնա՝ և կերիցէ. կամ վաճառեսցես օտարոտւոյն. զի ժողովուրդ սր ես դու Տն Այ քոյ. Մի եփեսցես զգառն 'ի կաթն մօր իւրոյ. * Տասանորդս տասանորդեսցես յամ արմտեաց սերմանց քոց. զարմտիս անդոյ քոյ ամ ըստ ամէ. * Եւ կերիցես զայն առաջի Տն Այ քո. 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տէր Ած քո՝ անուանել զանուն իւր 'ի վերայ նր, անդ մատուսցես զտասանորդս ցորենոյ քոյ. և զգինւոյ քոյ և զիւղոյ քոյ. և զանդրանիկս արջառոյ քոյ. և զոչխարի քոյ. զի ուսցիս երկնչել 'ի Տէ Այ քումմէ զամ աւուրս. * Ապա թէ հեռի իցէ 'ի քէն ճանապարհն. և ոչ կարիցես տանել զայն. վասնզի հեռի իցէ 'ի քէն տեղին՝ զոր ընտրեսցէ Տր Ած քո անուանել զանուն իւր անդ՝ զի օրհնեաց զքեզ Տր Ած քո. * Վաճառեսցես զայն արծաթոյ. և առցես զարծաթն 'ի ձեռին քում. և երթիցես 'ի տեղին՝ զոր ընտրեսցէ Տր Ած քո. * Եւ տացես զարծաթն ընդ ամենայնի՝ որում ցանկանայցէ անձն քո, արջառոյ՝ կամ ոչխարի. կամ գինւոյ. կամ ցքւոյ. կամ ամի՝ որում ցանկանայցէ անձն քո. և կերիցես անդ առաջի Տն Այ քոյ. և ուրախ լինիցիս դու՝ և տուն քո. * Եւ զղեւտացին՝ որ 'ի քաղաքս քո, մի թողուցուս զնա. զի ոչ գոյ նորա բաժին՝ և ոչ ժառանգութի ընդ քեզ. * Յետ երից ամաց

Margin references: Վեր. 7. 6. — Վար. 26. 18. — Ղեւտ. 11. 4. — Ելք. 23. 19. և 34. 26.

ամաց հանիցես զտասանորդս ար_
մտեաց քոց. և յամի յամիկ դիցես
զայն 'ի քաղաքս քո ։ 29 * Եւ եկեսցէ ղև_
տացին՝ քանզի ոչ գոյ նր բաժին և
ժառանգութի ընդ քեզ. և եկն. և
որբ. և այրի 'ի քաղաքս քո կերիցեն՝ և
յագեսցին. զի օրհնեսցէ զքեզ Տր Ա.Ծ
քո յամ գործս քո՝ զորս առնիցես ։

## Գլ. ԺԵ.

1 Եօթներորդ ամի արասցես թո_
ղութի ։ 2 * Եւ այս իցէ հրամանն
թողութեն ։ թողցես զամ պարտս քո՝
զորս պարտիցի քեզ ընկեր քո. և մի
պահանջիցես յընկերէ, և յեղբօրէ
քումմէ. զի թողութիւն կոչեցեալ է
Տն Ա.Յ քոյ ։ 3 * Յօտարոտւոյն պահան
ջիցես՝ որ ինչ իցէ քո առ նմա. բայց
եղբօրն քում թողութիւն արասցես
զպարտուցն քոց ։ 4 * Եւ մի լինիցի 'ի
միջի քում կարօտեալ. զի օրհնելով
օրհնեսցէ զքեզ Տր Ա.Ծ քո յերկրին՝
զոր Տր Ա.Ծ քո տալոց է քեզ 'ի ժա_
ռանգութի ժառանգել զնա ։ 5 * Եւ
եթէ լսելով լուիցես ձայնի Տն Ա.Յ
քոյ, պահել և առնել զամենայն պատ
ուիրանս՝ զորս ես պատուիրեմ քեզ
այսօր ։ 6 * Զի Տր Ա.Ծ քո օրհնեաց
զքեզ. որպէս և խոստացաւ քեզ՝ և տացես
փոխ ազգաց բազմաց. և դու ոչ առ_
նուցուս փոխ ։ և տիրեսցես ազգաց
բազմաց. և քեզ մի տիրեսցեն ։ 7 * Եւ
եթէ լինիցի 'ի միջի քում կարօտեալ
յեղբարց քոց 'ի քաղաքաց քոց 'ի միում
յերկրին՝ զոր տացէ քեզ Տր Ա.Ծ քո.
մի դարձուցանիցես զսիրտ քո. և մի
կծկիցես զձեռն քո յեղբօրէ քումմէ
կարօտելոյ ։ 8 * Այլ ընդարձակելով
ընդարձակեսցես նմա զձեռն քո. ‖ և
տալով տացես նմա փոխ որչափ և
խնդրիցէ 'ի կարօտութե իւրում ։
9 * Զգոյշ լեր անձին քում. գուցէ
լինիցի բան ծածուկ անօրէնութե 'ի
սրտի քում. և ասիցես՝ մերձ է ամն
եօթներորդ՝ ամն թողութե. և չարա
կնեսցէ ակն քո 'ի վր եղբօր քոյ կարօ
տելոյ. և ոչ տայցես նմա. և բողոքես
ցէ զքէն առ Տր. և լինիցի քեզ այն
մեղք մեծամեծք ։ 10 * Այլ պարգևելով
պարգևեսցես նմա՝ և տալով տացես
նմա՝ որչափ և պիտոյ իցէ ։ և մի տրտ_
մեսցիս 'ի սրտի քում զկնի տալոյն քոց
նմա. զի վասն բանին այնորիկ օրհ_
նեսցէ զքեզ Տր Ա.Ծ քո յամի գործս
քո. և յամի յորինչ և մխիցես զձեռն
քո ։ 11 * ‖ Զի ոչ պակասէ կարօտեալ
յերկրէ. վս այնորիկ ես պատուիրեմ
զբանս զայս՝ և ասեմ. ընդարձակե_
լով ընդարձակեսցես զձեռն քո յաղ_
քատ և 'ի տառապեալ եղբայր քո՝ որ
իցէ յերկրին քում ։ 12 * ‖ Եւ եթէ վա_
ճառեսցի քեզ եղբայր քո եբրայեցի,
կամ կին եբրայեցի, ծառայեսցէ քեզ
զվեց ամ. և յամին եօթներորդի ար
ձակեսցես զնա ազատ 'ի քէն ։ 13 * Եւ
յորժամ արձակեսցես զնա, ոչ ար_
ձակեսցես զնա ունայն ։ 14 * Այլ հան
դերձելով հանդերձեսցես զնա յոչխա
րաց քոց. և 'ի ցորենոյ քումմէ. և 'ի
հնձանէ քումմէ. որպէս և օրհնեաց
զքեզ Տր Ա.Ծ քո՝ տացես նմա ։ 15 * Եւ
յիշեսցես, զի և դու ծառայ էիր յերկ
րին եգիպտացւոց. և փրկեաց զքեզ
Տր Ա.Ծ քո անտի ։ վասն այնորիկ ես
պատուիրեմ քեզ առնել զբանս զայս ։
16 * Ապա թէ ասիցէ ցքեզ. ոչ ելանեմ
'ի քէն. զի սիրեաց զքեզ և զտուն քո.
զի բարի իցէ նմա առ քեզ ։ 17 * Առցես
հերիւն և ծակեսցես զունկն նորա 'ի
վերայ սեմոց դրանն. և եղիցի քեզ
ստրուկ յաւիտեան. և զաղախին քո
նոյնպէս արասցես ։ 18 * Եւ մի խիստ
թուեսցի առաջի քո յորժամ արձա_
կեսցես զնոսա ազատս 'ի քէն. զի ամի
ամի վարձու վարձկանի ծառայեաց
քեզ զվեց ամ. և օրհնեսցէ զքեզ Տր
Ա.Ծ քո յամի զինչ և գործեսցես ։
19 * Զամ անդրանիկս՝ որք ծնանիցին
յանդեայս քո՝ և 'ի հօտս քո, զարուսն
'ի նոցանէ սրբեսցես Տն Ա.Յ քում.
ոչ գործեսցես անդրանկաւ եզին քոյ.
և մի կտրեսցես զանդրանիկս հօտից
քոց ։ 20 * Ամ յամէ կերիցես զնա առա
ջի Տն 'ի տեղւոջն՝ զոր ընտրեսցէ Տր
Ա.Ծ քո. դու և տուն քո ։ 21 * ‖ Եւ եթէ
արատաւոր իցէ՝ կամ կաղ. կամ կոյր.
և կամ ամենայն արատ չար զինչ և
գուցէ 'ի նմա, մի զենցես զնա Տն Ա.Յ
քում ։ 22 * Այլ 'ի քաղաքս քո կերիցես
զնա. անսուրբն 'ի քեզ և սուրբն նոյնպէս
կերիցեն. իբրև զայծեամն կամ զեղ_
ջերու ։ 23 * Բայց զարիւն մի ուտիցես.
յերկիր հեղուցուս զնա իբրև զջուր ։

## Գլ. ԺԶ.

1 Զգուշասջիր ամսոյն կանխոյ. և
արասցես զզատիկ Տն Ա.Յ քոյ.
զի յամսեանն կանխոյ ելեր յեգիպտո
սէ 'ի գիշերի ։ 2 * Եւ զենցես զզատիկ
Տն Ա.Յ քում. ոչխարս և արջառս. 'ի
տեղւոջն զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ քո
անուանել զանուն իւր անդ ։ 3 * Մի
ուտիցէք ընդ նմա խմորուն. զեօթն
օր բաղարջ կերիցես ընդ նմա. հաց
չարչարանաց ։ քանզի տագնապաւ ե_
լէք յեգիպտոսէ՝ զի յիշիցէք զօրն ելից
ձերոց

‖ Մատթ. 5.42. Ղուկ. 6.34.
‖ Մատթ. 26.11.
‖ Ելից 21.2. Երեմ. 34.14.
‖ Ղևտ. 22.20. և 21. Սիրաք. 35.14.

ձերոց յերկրէն եգիպտացւոց զա՟մ աւուրս կենաց ձերոց։ 4 *Եւ մի երեւեսցի 'ի քեզ խմոր յամենայն սահմանս քո զեօթն օր․ և մի ագցի 'ի մսոյն՝ զոր զենուցուս յերեկորեայ յաւուրն առաջնոյ ցայգ ։ 5 *Եւ մի ժտեսցիս զենուլ զզատիկն 'ի միում քաղաքաց քոց՝ զորս Տր Ա.Ծ քո տացէ քեզ։ 6 *Այլ 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ քո անուանել զանուն իւր 'ի նմա, անդ զենցես զզատիկն առ երեկս ընդ արեւմուտս․ 'ի ժամանակին յորում ելեր յեգիպտոսէ ։ 7 *Եփեսցես՝ և խորովեսցես․ և կերիցես 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ քո․ դարձցիս 'ի վաղիւն և երթիցես 'ի տուն քո ։ 8 *Զվեց օր կերիցես բաղարջ․ և յաւուրն եօթներորդի ելք տօնի Տն Ա.Յ քոյ։ մի գործեսցես 'ի նմա զամենայն գործ․ բայց որինչ գործիցի անձին։ 9 *Եօթն եօթներորդս համարեսցես քեզ, 'ի սկսանելոյ մանգաղի քոյ յոճ, սկսանիցես համարել եօթն եօթներորդս ։ 10 *Եւ արասցես տօն եօթներորդաց Տն Ա.Յ քում․ որչափ կարօղ իցէ ձեռն քո ըստ ընչին՝ զոր տացէ քեզ՝ որպէս զխարդ օրհնեսցէ զքեզ Տր Ա.Ծ քո։ 11 *Եւ ուրախ լիցիս առաջի Տն Ա.Յ քոյ, դու՝ և ուստր քո՝ և դուստր քո․ ծառայ քո․ և աղախին քո․ և ղեւտացին որ 'ի քաղաքս քո․ և եկն՝ և որբն՝ և այրին որ 'ի ձեզ․ 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ անուանել զանուն իւր անդ ։ 12 *Եւ յիշեսցես զի ծառայ էիր յերկրին եգիպտացւոց․ և զգուշասցիս՝ և արասցես ըզպատուիրանս զայսոսիկ։ 13 *Տօն տաղաւարահարաց արասցես զեօթն օր․ 'ի ժողովել քեզ 'ի կալոյ քումմէ և 'ի հնձանէ քումմէ ։ 14 *Եւ ուրախ լիցիս 'ի տօնի քում․ դու՝ և ուստր քո՝ ծառայ քո՝ և աղախին քո․ և ղեւտացին՝ և եկն՝ և որբն՝ և այրին՝ որք իցեն 'ի քաղաքս քո։ 15 *Զեօթն օր տօնեսցես Տն Ա.Յ քում․ 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ քո 'ի նմա։ և եթէ օրհնեսցէ զքեզ Տր Ա.Ծ յամենայն արմտիս քո, և յա՟մ գործս ձեռաց քոց, և լինիցիս ուրախ։ 16 *Զերիս ժամանակս 'ի տարւոջ յանդիման լիցի ամենայն արու քո առաջի Տն Ա.Յ քո՝ 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր։ 'ի տօնի բաղարջակերացն․ և 'ի տօնի եօթներորդացն․ և 'ի տօնի տաղաւարահարացն․ և ոչ երեւեսցիս առաջի Տն Ա.Յ քոյ ունայնաձեռն։ 17 *Իւրաքանչիւր ըստ կարի ձեռաց իւրոց՝ ըստ օրհնութեան Տն Ա.Յ քո՝ զոր ետ քեզ։ 18 *Դատաւորս՝ և ատենադպիրս կացուսցես յա՟մ քաղաքս քո՝ զորս Տր Ա.Ծ քո տացէ քեզ ըստ ցեղից․ և դատեսցեն զժողովուրդն դատաստան արդար։ 19 *Եւ մի աչառիցեն երեսաց․ և մի առնուցուն կաշառս․ քանզի կաշառ կուրացուցանէ զաչս իմաստնոց․ և ապականէ զբանս արդարոց։ 20 *Արդարութբ արասցես զիրաւունս, զի կեցցէք․ և մտանիցէք ժառանգել զերկիրն՝ զոր Տր Ա.Ծ տացէ ձեզ։ 21 *Մի տնկեսցես քեզ անտառ ա՟մ փայտի առ սեղանով Տն Ա.Յ քոյ։ 22 *Եւ մի արասցես ինչ քեզ ձօնի։ և կանգնեսցես քեզ զարձան՝ զոր ատեաց Տր Ա.Ծ քո։

(Ղեւ. 23.15. — Ելից. 23. 15. — Ել. 34.20. — Սիրաք. 35.6. — Ելից. 23. 8. — Ժող. 19.15. — Եր. 1.17. — Սիրաք. 20.31.)

## Գլ։ ԺԷ։

1 Եւ մի զոհիցես Տն Ա.Յ քում զարջառ կամ ոչխար՝ յորում իցէ արատ ինչ․ ըստ ա՟մ արատաւոր բանի․ զի պիղծ է այն առաջի Տն Ա.Յ քոյ։ 2 *Եւ եթէ գտցի 'ի միջի քում, 'ի միում 'ի քաղաքացն՝ զոր Տէր Ա.Ծ քո տացէ քեզ՝ այր կամ կին՝ որ առնիցէ զչար առաջի Տն Ա.Յ քոյ, անցանել զուխտիւ նր ։ 3 *Եւ երթեալ պաշտիցեն զաստուածս օտարս․ և երկիրպագանիցեն նոցա․ արեգական․ կամ լուսնի․ կամ ա՟մի որ իցէ 'ի զարդուէ երկնից․ զորս ոչ հրամայեցի։ 4 *Եւ պատմեսցի քեզ։ և քննեսցես յոյժ․ և ահա ճշմարտիւ լեալ իցէ բանն․ և եղեալ իցէ պղծութիւնն այն 'ի մէջ իսրայէլի։ 5 *Հանցես զայրն զայն, կամ զկինն՝ որք արարին զբանն չար 'ի դրունս ձեր․ և քարկոծեցէք զնս քարամբք՝ և մեռցին։ 6 *Երկուք և երիւք վկայիւք մեռցի՝ որ մեռանիցին․ և մի մեռցի միով վկայիւ։ 7 *Եւ ձեռն վկայիցն եղիցի նախ 'ի նա սպանանել զնա․ և ապա ձեռն ա՟մ ժողովրդեանն։ և բարձցես զչարն 'ի միջոյ ձերմէ։ 8 *Եւ եթէ վրիպեսցի 'ի քէն բան 'ի դատաստանի․ 'ի մէջ արեան և արեան․ և 'ի մէջ դատաստանի և դատաստանի․ և 'ի մէջ գրգռութե և գրգռութե․ և 'ի մէջ հակառակութե և հակառակութե, բան դատաստանի 'ի քաղաքս քո․ և յարուցեալ ելցես 'ի տեղին զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ քո՝ անուանել զանուն իւր անդ ։ 9 *Եւ երթիցես առ քահանայսն և ղեւտացիս․ և առ դատաւորն՝ որ լինիցի յաւուրսն յայնոսիկ․ և քննեալ պատմեսցեն քեզ զդատաստանն։ 10 *Եւ արասցես ըստ հրամանին, զոր պատմեսցեն քեզ՝ որք 'ի տեղւոյն իցեն՝ զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ քո․ և զգուշասջիր յոյժ առնել ըստ ա՟մի

(Մատ. 19.15. — Մատ. 18.16. — 2. Կոր. 13.1. — Եբր. 13.9. — 2. Մն. 19.8.)

որ

ոպ օրինադրեսցի քեզ ։ * Ըստ օրի- 11
նացն և ըստ դատաստանի՝ զոր ասաս-
ցեն քեզ՝ արասցես. և մի խոտորեսցես
'ի բանէն՝ զոր պատմեսցեն քեզ . մի
յաջ և մի յահեակ ։ * Եւ մարդ ոք՝ 12
որ առնիցէ հպարտութիւ առ'ի չլսե-
լոյ քահանային՝ որ կայցէ պաշտել յա-
նուն Տն Այ քոյ . կամ դատաւորին,
որ իցէ յաւուրսն յայնոսիկ , մեռցի
մարդն այն ։ և բարձցես զչարն յԻղէ ։
* Եւ ամ ժողովրդեանն լուեալ եր- 13
կիցէ . և մի ևս ամպարշտեսցի ։ * Եւ 14
եթէ մտանիցես յերկիրն՝ զոր Տէր
Ած քո տացէ քեզ . և ժառանգեսցես
զնա . և բնակեսցես 'ի նմա . և ասի-
ցես . կացուցից 'ի վերայ իմ իշխան
ոպ և այլ ազգք՝ որք շուրջ զինև են ։
* Կացուցանելով կացուսցես 'ի վերայ 15
քո իշխան՝ զոր ընտրեսցէ Տր Ած քո ։
յեղբարց քոց կացուսցես քեզ իշխան.
և մի իշխեսցես կացուցանել քեզ զայր
օտար՝ որ չիցէ եղբայր քո ։ * Զի մի 16
յաճախեսցէ իւր երիվարս. և մի դար-
ձուսցէ զժողովուրդն յեգիպտոս ։ զի
Տր ասաց . թէ մի ևս յաւելջիք դառ-
նալ ընդ նոյն ճանապարհ ։ * Եւ մի 17
յաճախեսցէ իւր կանայս . զի մի խո-
տորեսցի սիրտ նորա . և արծաթ և
ոսկի մի կարի յաճախեսցէ իւր ։ * Եւ 18
եղիցի յորժամ նստիցի յիշխանութե
իւրում, գրեսցես նմա զերկրորդումն
օրինացս այսոցիկ 'ի մատենի ։ * Եւ՛ 'ի 19
քահանայիցն ղևտացւոց լիցի առ
նմա . և ընթերցցի զնա զամ աւուրս
կենաց իւրոց . զի ուսցի երկնչիլ 'ի Տէ
Այ քումմէ . պահել զամ պատուի-
րանս զայսոսիկ ։ և առնել զիրաւունս
զայսոսիկ ։ * Զի մի հպարտանայցէ 20
սիրտ նր 'ի վերայ եղբարց իւրոց . զի
մի անցանիցէ զպատուիրանօքս յաջ
կամ յահեակ . զի երկայնակեաց լիցի
յիշխանութե իւրում . ինքն և որդիք
իւր 'ի մէջ որդւոցն իսրայէլի ։

## ԳԼ ։ ԺԸ ։

‖ Թուոց 18.20. Եբր. 10.9. 1. Կորն. 9.13.

Եւ՛ մի ‖ լիցի քահանայիցն ղևտա- 1
ցւոց որդւոցն ղևեայ բաժին և
ժառանգութի ընդ իէլի ։ երախայ-
րիքն Տն վիճակ նոցա . զայն կերիցեն ։
* Եւ՛ վիճակ մի լիցի նոցա 'ի մէջ եղ- 2
բարց իւրեանց . զի Տր է վիճակ նց .
որպէս ասաց նց ։ * Եւ այսոքիկ են 3
իրաւունք քահանային 'ի ժողովրդե-
նէ անտի՝ որք զենուցուն զենլիս. եթէ
արջառ իցէ, և եթէ ոչխար, տացէ քա-
հանային զերին՝ և զծնօտսն՝ և զխա-
խացոցն ։ * ‖ Եւ զպտուղս ցորենոյ 4
քոյ . և զգինւոյ քոյ . և զիւղոյ քոյ . և

‖ Թուոց 18.11.

զպտուղ կտրոց խաշանց քոց տացես
5 նոցա ։ * Զի զնա ընտրեաց Տր յամ
ցեղիցն քոց կալ առաջի Տն Այ քոյ .
պաշտել և օրհնել յանուն նորա . նա
6 և որդիք իւր զամ աւուրս ։ * Ապա
թէ եկեսցէ ղևտացին 'ի մի 'ի քաղա-
քացն քոց յամ որդւոցն իէլի՝ ուր իցէ
ինքն բնակեալ . և եկեսցէ ըստ ցան-
կութե անձին իւրոյ 'ի տեղին՝ զոր
7 ընտրեսցէ Տր ։ * Պաշտեսցէ զանուն
Տն Այ իւրոյ ։ իբրև զամ եղբարսն
իւր ղևտացիս՝ որք կայցեն անդ առա-
8 ջի Տն Այ ։ * Կերիցէ զմասնն հաւասար
բաց 'ի յիւրաքանչիւր յազգականն վաճա-
9 ռէն ։ * Եւ՛ եթէ մտանիցես յերկիրն՝
զոր Տր Ած տացէ քեզ . մի ուսանիցես
առնել ըստ գարշելեաց ազգացն այնո-
10 ցիկ ։ * ‖ Մի՛ գտանիցի 'ի քեզ՝ որ ածի-
ցէ զուստր իւր կամ զդուստր իւր զհր-
ցով . և դիւթիցէ զդիւթութիւն, և
11 հմայիցէ . և հաւահարց լինիցի ։ * Եւ՛
‖ կախարդիցէ կախարդանօք. և վհուկ
և նշանագէտ լինիցի առ'ի զմեռեալս
12 հարցանելոյ ։ * Քանզի պիղծ է Տն
Այ՝ որ առնէ զայն ։ զի վասն այսպի-
սեաց գարշելեաց սատակեսցէ զնոսա
13 Տր 'ի քէն ։ * Կատարեալ լինիցիս ա-
14 ռաջի Տն Այ քոյ ։ * Զի ազգքն այ-
նոքիկ՝ զորս դու ժառանգելոց ես .
նոքա հմայից և դիւթութեանց անսան .
բայց քեզ ոչ այնպէս ետ հրաման Տր
15 Ած քո ։ * ‖ Մարգարէ յեղբարց քոց
իբրև զիս յարուսցէ քեզ Տէր Ած քո,
16 նմա լուիջիք ։ * Ըստ ամի զոր խնդ-
րեցեր 'ի Տէ Այ քումմէ ‖ 'ի քորեբ
յաւուրն եկեղեցւոյ . ասէիք ոչ ևս
յաւելուցումք լսել զձայն Տն Այ
մերոյ . և զհուրդ զայդ զմեծ ոչ ևս
17 տեսցուք . զի մի մեռանիցիմք ։ * Եւ
ասէ ցիս Տր . ուղիղ է ամ ինչ՝ զոր խօ-
18 սեցան ։ * ‖ Մարգարէ յարուցից նոցա
յեղբարց իւրեանց իբրև զքեզ . և
տաց զպատգամս իմ 'ի բերան նր . և
խօսեսցի ընդ նս ոպ և պատուիրեցից
19 նմա ։ * Եւ՛ մարդ՝ որ ոչ լուիցէ՝ զոր խօ-
սիցի մարգարէն յանուն իմ, ես խնդրե-
20 ցից զվրէժ 'ի նմանէ ։ * Բայց մարգա-
րէն՝ եթէ ամպարշտեսցի խօսիլ յա-
նուն իմ բան ինչ՝ զոր ես ոչ հրամայե-
ցի խօսել . և կամ թէ խօսիցի յանուն
աստուծոց օտարաց, մեռցի մարգա-
21 րէն այն ։ * Ապա թէ ասիցէք 'ի սրտի
զիարդ գիտասցուք զբանն՝ զոր ոչ խօ-
22 սեցաւ Տր ։ * Զորինչ խօսիցի մարգա-
րէն յանուն Տն և ոչ լինիցի բանն՝ և
ոչ դիպիցի, այն բանէ՝ զոր ոչ խօսե-
ցաւ Տր ։ ամպարշտութե խօսեցաւ
մարգարէն . մի թողուցուք նմա ։

‖ Ղևտ. 20. 27.
‖ 1. Թագ. 28.7.
‖ Յոհ. 1. 45. Գործ. 3.22.
‖ Ելից 20. 21.
‖ Յոհ. 1. 41.

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ եթէ սատակեսցէ Տէր Աստուած քո զազգսն՝ զորոց Տէր Աստուած տացէ քեզ զերկիրն նոցա. և ժառանգեսցես զնա. և բնակեսցես ՚ի քաղաքս և ՚ի տունս նոցա: 2 *Երիս քաղաքս զատուսցես քեզ ՚ի միջոյ երկրին՝ զոր Տէր Աստուած քո տացէ քեզ: 3 *Եւ կազմեսցես քեզ զճանապարհն. և ընդ երիս բաժանեսցես քեզ զսահմանս երկրին քո. զոր բաժանեսցէ քեզ Տէր Աստուած քո. և եղիցի անդ ապաստան ամենայն սպանողի: 4 *Եւ այս սահման եղիցի ամենայն սպանողի՝ որ փախիցի անդ՝ ևապրեսցի. որ ոք հարկանիցէ զընկեր իւր ակամայ. և նա ոչ ատեայր զնա յերէկն և յեռանդ: 5 *Եւ որ ոք մտանիցէ ընդ ընկերի իւրում ՚ի մայրի հարկանել զփայտ. և ամբառնայցէ ըզձեռն իւր փայտատաւն հարկանել զփայտ, և անկանիցի երկաթն ՚ի մեղէխէ անտի. և գտանիցէ զընկերն և մեռանիցի, փախիցէ նա, և անկցի ՚ի մի ՚ի քաղաքացն այնոցիկ՝ և կեցցէ: 6 *Զի մի պնտեսցի մերձաւոր արեանն զկնի սպանողին՝ մինչդեռ այրիցի սիրտ նորա. և հասանիցի նմա եթէ հեռագոյն իցէ ճանապարհն. և հարկանիցէ զանձն նորա. և նմա չէ դատաստան մահու՝ զի ոչ ատեայր զնա յերէկն և յեռանդ: 7 *Վասն այնորիկ ես պատուիրեմ քեզ զբանս զայս՝ և ասեմ. երիս քաղաքս զատուսցես քեզ: 8 *Եւ եթէ ընդարձակեսցէ քեզ Տէր Աստուած քո զսահմանս քո որպէս և երդուաւ Տէր հարցն քոց. և տացէ քեզ Տէր զամենայն երկիրն՝ զոր խոստացաւ տալ հարցն քոց: 9 *Եւ եթէ լուիցես առնել զամ պատուիրանս զայսոսիկ. զորս ես պատուիրեմ քեզ այսօր սիրել զՏէր Աստուած քո. և գնալ յամ ճանապարհս նորա զամենայն աւուրս. և յաւելցես քեզ այլ ևս երիս քաղաքս յայնս յերիսն: 10 *Եւ մի հեղցի արիւն անպարտ յերկրին քում. զոր Տէր Աստուած քո տացէ քեզ ՚ի ժառանգութիւն. և մի ոք լիցի ՚ի միջի քում պարտական արեան: 11 *Եւ եթէ լինիցի այր՝ որ ատիցէ զընկեր իւր. և դարան գործիցէ նմա. և յարիցէ ՚ի վերայ նորա՝ և հարկանիցէ զանձն նորա՝ և մեռանիցի. և փախիցի ՚ի մի քաղաքացն այնոցիկ: 12 *Առաքեսցեն ծերակոյտ քաղաքի նորա՝ և առցեն զնա անտի. և մատնեսցեն զնա ՚ի ձեռս մերձաւորի արեանն՝ և մեռցի: 13 *Եւ մի խնայեսցէ ակն քո ՚ի նա. և սրբեսցես զարիւն անպարտ ՚ի միջոյ Իսրայէլի. և բարի լիցի քեզ: 14 *Մի փոխեսցես զսահմանս ընկերի քո՝ զոր հաստատեցին հարքն քո ՚ի ժառանգութեան քում, զոր ժառանգեսցես յերկրին՝ զոր Տէր Աստուած տացէ քեզ ՚ի ժառանգութիւն: 15 *Ոչ հաստատեսցի մի վկայ վկայել զմարդոյ ըստ ամ ապիրատութեան՝ և ըստ ամ յանցանաց, և ըստ ամ մեղաց՝ զոր մեղանչէ. ՚ի բերան երկուց և երից վկայից հաստատեսցի ամ բան: 16 *Եւ եթէ կայցէ յառաջ սուտ վկայ զմարդոյ. և չարախօսեսցէ զնմանէ ամպարշտութիւն ինչ: 17 *Կացցեն երկոքեան արքն՝ որոց հակառակութիւն իցէ, առաջի Տն և առաջի քահանայիցն՝ և առաջի դատաւորացն՝ որք իցեն յաւուրսն յայնոսիկ: 18 *Եւ քննեսցեն դատաւորքն ճշմարտութբ. և ահա վկայ անիրաւ վկայեաց զանիրաւութիւն. և եկաց հակառակ եղբօր իւրում: 19 *Արասջիք նմա՝ որպ խորհեցաւ չար առնել ընկերի իւրում. և բարձէք զչարն ՚ի միջոյ ձերմէ: 20 *Եւ այլոցն լուեալ՝ զահի հարկանիցին. և մի ևս յաւելցին առնել ըստ բանին այնմիկ չարի ՚ի միջի ձերում: 21 *Մի խնայեսցէ ակն քո ՚ի նա. անձն ընդ անձին՝ ակն ընդական. ատամն ընդ ատաման. ձեռն ընդ ձեռին. ոտն ընդ ոտին:

## ԳԼ. Ի.

1 Եւ եթէ ելանիցես ՚ի պատերազմ ՚ի վերայ թշնամեաց քոց. և տեսանիցես երիվարս և հեծեալս և զազգ բազում քան զքեզ. մի երկնչիցես ՚ի նոցանէ, զի Տէր Աստուած քո ընդ քեզ է՝ որ եհան զքեզ յերկրէն Եգիպտացւոց: 2 *Եւ եղիցի յորժամ մերձենայցես ՚ի պատերազմ. մատուցեալ քահանայն խօսեսցի ընդ ազգին: 3 *Եւ ասասցէ ցնոսա. լուր Իսրայէլ. դուք դիմեալ երթայք այսօր ՚ի պատերազմ աւադիկ ՚ի վերայ թշնամեաց ձերոց. մի լքանիցին սիրտք ձեր. և մի երկնչիցիք. և մի զարհուրիցիք. և մի խուսիցէք յերեսաց նոցա: 4 *Զի Տէր Աստուած մեր երթայ առաջի ձեր ընդ ձեզ. տալ պատերազմ վասն ձեր ընդ թշնամիս ձեր. ապրեցուցանել զձեզ: 5 *Եւ խօսեսցին դպիրքն ընդ ժողովրդեանն՝ և ասասցեն. այր ոք՝ որոյ շինեալ իցէ տուն նորաշէն. և ոչ իցէ արարեալ նմա նաւակատիս, գնասցէ, և դարձցի ՚ի տուն իւր. գուցէ մեռանիցի ՚ի պատերազմի. և այլ այր առնիցէ նմա նաւակատիս: 6 *Եւ այր ոք՝ որոյ տնկեալ իցէ այգի. և չիցէ ուրախ լեալ ՚ի նմանէ, գնասցէ, և դարձցի անդրէն ՚ի տուն

տուն իւր. գուցէ մեռանիցի ՚ի պատերազմի. և այլ այր ուրախ լիցի ՚ի նմանէ։ 7 *Եւ այր ոք՝ որոյ խօսեալ իցէ կին, և չիցէ առեալ զնա, գնասցէ, և դարձցի ՚ի տուն իւր. գուցէ մեռանիցի ՚ի պատերազմի. և այլ այր առնուցու զնա։ 8 *Եւ յաւելցեն դպիրքն խօսել ընդ ժողովրդեանն՝ և ասասցեն. ‖ այր ոք որ երկնչիցի՝ և վատասիրտ սրտիւ իցէ. գնասցէ՝ և դարձցի ՚ի տուն իւր. զի մի զանգիտեցուսցէ զսիրտ եղբօր իւրոյ իբրև զիւրն։ 9 *Եւ եղիցի յորժամ դադարեսցեն դպիրքն ՚ի խօսելոյ ընդ ժողովրդեանն. կացուսցեն իշխանս զօրուն առաջնորդս ժողովրդեանն։ 10 *Եւ եթէ մերձենայցես ՚ի քաղաք տալ պատերազմ ընդ նմա, կոչեսցես զնոսա ՚ի խաղաղութի։ 11 *Եւ եղիցի եթէ տայցեն խաղաղութե պատասխանի. և բացցեն քեզ. եղիցի ամենայն ժողովուրդն՝ որք գտանիցին ՚ի նմա հարկատուք՝ և հնազանդեալք քեզ։ 12 *Ապա թէ ոչ հնազանդեսցին քեզ. և արասցեն ը քեզ պատերազմ, պաշարեսցես զնա։ 13 *Եւ մատնեսցէ զնա Տէր Ած քո ՚ի ձեռս քո. և հարցես զամենայն արու նորա կոտորմամբ սրոյ։ 14 *Բաց ՚ի կանանց՝ և ՚ի կահուէ՝ և յամ անասնոյ. և զամ ինչ զինչ և գտանիցի ՚ի քաղաքին, և զամ աւար առցես քեզ յաւարի. և կերիցես զամ զաւար թշնամեաց քոց՝ զոր Տր Ած քո տացէ քեզ։ 15 *Նոյնպէս արասցես ընդ ամենայն քաղաքս ընդ յոյժ հեռաւորս. որք ոչ ՚ի քաղաքաց ազգացն այնոցիկ իցեն։ 16 *Բայց ՚ի քաղաքաց ազգացն այնոցիկ՝ զորս Տր Ած քո տացէ քեզ զերկիր նոցա ՚ի ժառանգութի, մի ապրեցուցանիցէք ՚ի նոցանէ զամ շնչաւոր։ 17 *Այլ նզովելով նզովեսջիք զնոսա. զքետացին. և զամորհացին. և զքանանացին. և զփերեզացին և զխևացի. և զյեբուսացի. և զգերգեսացի. զոր օրինակ պատուիրեաց Տր Ած քո։ 18 *Զի մի ուսուցանիցեն ձեզ առնել զամենայն գարշելութիս իւրեանց. զորս արարին դիցն իւրեանց. և մեղանչիցէք առաջի Տն Այ ձերոյ։ 19 *Եւ եթէ նստեալ պաշարեսցես զքաղաք աւուրս բազումս՝ մարտնչել ընդ նմա յառնուլ զնա, մի հարկանիցես զծառատունկ նր արկանելով ՚ի նմա երկաթ. այլ կերիցես ՚ի նմանէ. և զնա մի հարկանիցես՝ մի թէ մարդ իցէ ծառատունկն՝ որ յանդի անդ իցէ՝ մտանել յերեսաց քոց ՚ի պատնէշ։ 20 *Այլ զփայտ՝ զոր գիտիցես թէ չիցէ պտղաբեր, զայն հարցես՝ և կոտորեսցես. և շինեսցես պատնէշ շուրջ զքաղաքաւն որ տայցէ ընդ քեզ պատերազմ մինչև մատնեսցի։

‖ Դատ. 7. 3.

## Գլ. ԻԱ.

1 Եւ եթէ գտանիցի վիրաւոր յերկրի քում, զոր Տր Ած քո տացէ քեզ ժառանգել. և անկեալ դնիցի ՚ի դաշտի. և ոչ գիտիցեն զայն՝ որ խոցեացն զնա։ 2 *Ելցեն ծերակոյտն քո՝ և դատաւորն քո. և չափեսցեն շուրջ զվիրաւորաւն զվայրս քաղաքացն. և եղիցի քաղաք՝ որ հուպ իցէ ՚ի վիրաւորն։ 3 *Առցէ ծերակոյտ քաղաքին այնորիկ զերինջ մի յարջառոց՝ որ ընդ գործ չիցէ մտեալ. և լուծ չիցէ ձգեալ։ 4 *Եւ իջուսցեն ծերակոյտ ժողովրդեանն զերինջն ՚ի ձոր մի ապառաժ. ուր չիցէ գործեալ՝ և ոչ սերմանեալ. և կարթակոտոր արասցեն զերինջն ՚ի ձոր անդր։ 5 *Եւ մատիցեն քահանայքն ղևտացիք՝ զի զնոսա ընտրեաց Տր Ած քո կալ առաջի իւր՝ և օրհնել յանուն նորա. և ըստ բերանոյ նոցա վճարեսցի ամենայն հակառակութի և ամենայն դրդուութի։ 6 *Եւ ամ ծերակոյտ քաղաքին այնորիկ՝ որ հուպ իցէ ՚ի վիրաւորն, լուասցեն զձեռս իւրեանց ՚ի վերայ գլխոյ երնջուն կարթահարելոյ ՚ի ձորն։ 7 *Եւ պատասխանի տուեալ ասասցեն՝ ձեռք մեր ոչ հեղին զարիւնս զայս. և աչք մեր ոչ տեսին։ 8 *Քաւեա զժողովուրդ քո զԻէլ՝ զոր փրկեցեր Տր՝ զի մի եկեսցէ արիւնս անպարտ ՚ի վր ժողովրդեան քոյ Իսրայէլի. և քաւեսցի ՚ի նոցանէ արիւնն։ 9 *Եւ բարձցես դու զարիւնն անպարտ ՚ի ձէնջ. և եթէ արասցես զբարին՝ և զհաճոյն առաջի Տն Այ քոյ։ 10 *Եւ եթէ ելանիցես ՚ի պատերազմ ՚ի վր թշնամեաց քոց. և մատնեսցէ զնոսա Տր Ած քո ՚ի ձեռս քո. և աւարեսցես զաւար նոցա։ 11 *Եւ տեսանիցես յաւարին զկին գեղեցիկ տեսլեամբ. և ցանկասցիս նմա. և առցես զնա քեզ կնութե։ 12 *Եւ տարցիս զնա ՚ի տուն քո. և գերծցես զգլուխ նորա։ 13 *Եւ սրբեսցես զեղունգունս նր՝ և հանցես զհանդերձ գերութե նր. և նստցի ՚ի տան քում. և լացցէ զհայր և զմայր իւր՝ զաւուրս ամսոյ միոյ. և ապա մտցես առ նա. և բնակեսցիս ընդ նմա. և եղիցի քո կին։ 14 *Եւ եղիցի եթէ ոչ հաճեսցիս ընդ նա՝ արձակեսցես զնա ազատ. և վաճառելով մի վաճառեսցես զնա արծաթոյ. և մի անարգեսցես զնա՝ քանզի լլկեցեր զնա։ 15 *Եւ եթէ

լինիցին առն միում երկու կանայք՝ և
լինիցի 'ի նոցանէ մինն սիրելի և միւսն
ատելի. և ծնանիցին նմա որդիս, սիրե
լին և ատելին, և լինիցի որդի անդրա
նիկ ատելւոյն ։ * Եւ եղիցի յաւուր 16
յորում ժառանգեցուցանիցէ որդւոց
իւրոց զինչս իւր, մի իշխեսցէ անդրան
կացուցանել զորդի սիրելւոյն. անտես
արարեալ զորդի ատելւոյն զանդրա_
նիկ ։ * ‖ Այլ զանդրանիկ ատելւոյն 17
ծանիցէ՝ տալ նմա կրկին յամէ որ լինչ
գտանիցի նորա. զի նա է սկիզբն որդ
ւոց նորա և նմա անկ է անդրանկու_
թիւն ։ * Եւ եթէ իցէ ուրուք որդի 18
խեռ՝ և անզգամ. և ոչ լուիցէ ձայնի
հօր և մօր իւրոյ. և խրատիցեն զնա
և ոչ անսայցէ նոցա ։ * Կալցեն զնա 19
հայր և մայր նր̃. և տարցին զնա առ
ծերակոյտ քաղաքին իւրեանց. և 'ի
դուռն տեղւոյն իւրեանց ։ * Եւ ա_ 20
սասցեն ցարս քաղաքին իւրեանց. որ
դիս մեր այս՝ խեռ է և անզգամ. և ոչ
լսէ ձայնի մերում. հանդամակող է, և
արբշիռ ։ * Եւ քարկոծեսցեն զնա 21
արք քաղաքին նորա քարամբք՝ և մեռ
ցի. և բարձջիք զչարն 'ի միջոյ ձերմէ.
և լուեալ այլոցն զահի հարկանիցին ։
* Եւ եթէ հասանիցին ումեք մեղք 22
մահապարտութե՝ և մեռանիցի. կա_
խեսջիք զնա զփայտէ ։ * Եւ մի ագա 23
նիցի մարմին նորա 'ի փայտին. այլ
թաղելով թաղեսջիք զնա 'ի նմին աւ
ուր ։ ‖ զի անիծեալ յԱյ̃ է ամենայն՝
որ կախիցի զփայտէ. և մի պղծիցէք
զերկիրն՝ զոր Տր̃ Ած̃ քո տացէ քեզ
'ի ժառանգութի ։

‖ 1. Մնա. 5. 1.

‖ Գաղա. 3. 13.

## ԳԼ ։ ԻԲ ։

Գուցէ ‖ տեսեալ զարջառ և զոչ_ 1
խար եղբօր քոյ մոլորեալս 'ի ճա
նապարհի, անտես առնիցես զնոսա ,
այլ դարձուցանելով դարձուսցես զնս̃
և ածցես առ եղբայր քո ։ * Ապա թէ 2
չիցէ մօտ եղբայրն քո առ քեզ. և ոչ
ճանաչիցես զնա՝ ժողովեսցես զնոսա
'ի տուն քո. և եղիցին առ քեզ, մինչև
խնդրեսցէ զնս̃ եղբայր քո՝ և տացես
ցնա ։ * Նոյնպէս արասցես զէշ նորա՝ 3
նոյնպէս արասցես զհանդերձ նորա.
նոյնպէս արասցես և զամենայն կո_
րուստ եղբօր քոյ. որինչ կորնչիցի 'ի
նմանէ, և գտանիցես. մի իշխեսցես
անտես առնել զայն ։ * Գուցէ տեսա 4
նիցես զէշ եղբօր քոյ՝ կամ զեզն նորա
անկեալ 'ի ճանապարհի, և զանց առ
նիցես զնոքօք. այլ յարուցանելով յա
րուսցես ընդ նմա ։ * Մի եղիցի հան_ 5
դերձ առնացի զկանամբք. և մի զգեց
ցի այր զզգեստ կանացի. զի պիղծ է
Տն̃ Այ̃ քում ա̃մ, որ առնէ զայն ։
6 * Եւ եթէ դիպեսցիս բունոյ հաւուց
առաջի քո 'ի ճանապարհի. եթէ 'ի
ծառոյ և եթէ 'ի գետին. ձագուց
կամ ձուոց՝ և մայրն ջեռեալ նստիցի
'ի վր̃ ձագուցն կամ ձուոց. մի առնու
ցուս զմայրն հանդերձ որդւովքն ։
7 * Արձակելով արձակեսցես զմայրն.
և զորդիսն առցես քեզ. զի բարի լիցի
քեզ և բազմօրեայ լինիցիս 'ի վերայ
8 երկրի ։ * Եւ եթէ շինեսցես տուն
նորաշէն. արասցես զպսակ շուրջ զտա
նեօքն ։ և մի սպանումն գործեսցես 'ի
տան քում, զի մի անկանիցի՝ որ ան_
9 կանելոյն իցէ 'ի նմա ։ * Մի վարես_
ցես զայգի քո այլ և այլ՝ զի մի սրբես
ցին արմտիքն և սերմն՝ զոր սերմանի
10 ցես ընդ բերից այգւոյն քոյ ։ * Մի
վարեսցես զէշ և զեզն 'ի միասին ։
11 * Մի զգենուցուս այլայլախառն՝
12 զասր և զկտաւ 'ի միասին ։ * ‖ Ծոպս
մանուածոյս արասցես 'ի վերայ չորե
ցունց տրանոց հանդերձից քոց , զոր
13 զգենուցուս ։ * Եւ եթէ առնուցու
ոք զկին՝ և ամուսնասցի ընդ նմա. և
14 ատեսցէ զնա ։ * Եւ դիցէ 'ի վր̃ պատ
ճառս բամբասական բանից. և անուն
չար հանիցէ զնմանէ՝ և ասիցէ. զկինս
զայս առի. և մերձեցեալ 'ի սա ոչ գտի
15 զկուսութի սորա ։ * Եւ առեալ հայր
և մայր աղջկանն հանցեն զկուսութի
աղջկանն առ ծերակոյտն 'ի դուռն ։
16 * Եւ ասասցէ հայր աղջկանն ցծերա
կոյտն. զդուստր իմ զայս ետու առնդ
17 այդմիկ կնութե ։ * Եւ ատեցեալ զսա
դնէ 'ի վր̃ պատճառս բամբասաւոր
բանից՝ և ասէ. ոչ գտի զկուսութիւն
դստեր քոյ. և ահաւասիկ կուսութի
դստեր իմոյ. և բացցեն զհանդերձն
առաջի ծերոց քաղաքին այնորիկ ։
18 * Եւ առցէ ծերակոյտ քաղաքին այ
նորիկ զայրն զայն , և խրատեսցեն
19 զնա ։ * Եւ տուժեսցեն 'ի նմանէ հա_
րիւր սիկղ. և տացեն հօր աղջկանն
փոխանակ զի եհան անուն չար զկու_
սէն իէլացւոյ. և նորին լիցի կին. և մի
իշխեսցէ արձակել զնա զամենայն ժա
20 մանակս ։ * Ապա թէ ճշմարիտ իցէ
բանն. և ոչ գտցի կուսութիւն աղջ
21 կանն ։ * Հանցեն զաղջիկն առ դուրս
հօր իւրոյ. և քարկոծ արասցեն զնա
արք քաղաքին իւրոյ՝ և մեռցի. զի ա_
րար անզգամութիւն 'ի մէջ որդւոցն
իէլի. պոռնկել 'ի տան հօր իւրոյ. և
22 բարձջիք զչարն 'ի ձէնջ ։ * ‖ Եւ եթէ
գտցի այր շնացեալ ընդ առնակնոջ,
սպանջիք զերկոսեան. զայրն շնացեալ
ընդ

‖ Ելից. 23. 4.

‖ Թուոց 15. 38.

‖ Ղևտ. 20. 10.

է̅ կնոջն՝ և զկինն. և բարձջիք զչարն յիսրայէլէ։ 23 *Եւ եթէ եղիցի աղջիկ կոյս՝ խօսեցեալ առն. և գտանիցէ զնա այր ոք 'ի քաղաքի՝ և ննջեսցէ ը̅ նմա։ 24 *Հանջիք զերկոսին 'ի դուռն քաղաքին իւրեանց. և քարկոծեսցեն զնոսա քարամբք՝ և մեռցին. զաղջիկն՝ զի ոչ բողոքեաց 'ի քաղաքին. և զայրն՝ որ լլկեաց զկին ընկերի իւրոյ. և բարձջիք զչարն 'ի միջոյ ձերմէ։ 25 *Ապա թէ 'ի դաշտի գտցէ այր զաղջիկ ոք՝ խօսեցեալ առն. և բռնաբար ննջեսցէ ընդ նմա. սպանջիք զայրն՝ որ ննջեաց ընդ նմա։ 26 *Եւ աղջկանն մի ինչ առնիցէք՝ զի ոչ է աղջկանն մեղս մահու. զի որպէս յառնիցէ մարդ 'ի վ̅ր ընկերի իւրոյ՝ և սպանանիցէ զնա՝ այնպէս է իրն։ 27 *Զի 'ի դաշտի եգիտ զնա. և բողոքեաց աղջիկն խօսեցեալ. և ոչոք էր՝ որ օգնէր նմա։ 28 *Եւ եթէ գտանիցէ ոք զաղջիկ կոյս՝ որ չիցէ խօսեցեալ առն՝ և բռնաբար ննջեսցէ ը̅ նմա։ 29 *Տացէ այրն՝ որ ննջեաց ընդ նմա՝ հօր աղջկանն յիսուն երկդրամեան արծաթոյ. և նա լիցի կին. և մի իշխեսցէ արձակել զնա զամենայն ժամանակս իւր։ 30 *Մի առցէ այր զկին հօր իւրոյ՝ և մի յայտնեսցէ զծածուկս հօր իւրոյ։

Ել. իբ. 22.16.

## ԳԼ: ԻԳ։

1 Մի մտցէ մալեալն՝ և կրճատեալն յեկեղեցի Ա̅յ։ 2 *Մի մտցէ պոռնկորդի յեկեղեցի Տ̅ն. մինչև 'ի տասն ազգն։ 3 *Մի մտցէ ամոնացի՝ և մովաբացի յեկեղեցի Տեառն, մինչև ցտասն ազգ՝ մի մտցեն յեկեղեցի Տ̅ն և մինչև ցյաւիտեան։ 4 *Վասն զի ոչ ելին ընդ առաջ ձեր հացիւ և ջրով 'ի ճանապարհի՝ ելանելոյն ձերոյ յեգիպտոսէ. և զի 'ի վարձու կալան վասն քո զբաղաամ որդի բէօրայ 'ի միջագետաց՝ անիծանել զքեզ։ 5 *Եւ ոչ կամեցաւ Տ̅ր Ա̅ծ քո՝ լսել բաղաամու, և դարձոյց Տ̅ր Ա̅ծ քո զանէծսն յօրհնութիւն՝ զի սիրեաց զքեզ Տէր Ա̅ծ քո։ 6 *Մի խօսեսցիս ընդ նոսա խաղաղութի̅ զա̅մ աւուրս քո մինչև ցյաւիտեան։ 7 *Մի գարշեսցուցանիցես զեդովմայեցին, զի եղբայր քո է. մի գարշեցուցանիցես զեգիպտացին, զի պանդուխտ էիր յերկրի նորա։ 8 *Եւ եթէ լինիցին նոցա որդիք՝ յերրորդ ազգի մտցեն յեկեղեցի Տ̅ն։ 9 *Եթէ ելանիցես 'ի պատերազմ 'ի բանակել 'ի վերայ թշնամեաց քոց, զգո՛յշ լինիջիր յամենայնէ բանէ չարէ։ 10 *Եթէ իցէ 'ի քեզ այր՝ որ չիցէ սուրբ 'ի ցայգուԹէ բղխմանէ, ելցէ արտաքոյ բանակին՝ և մի մտցէ 'ի բանակն։ 11 *Եւ ընդ երեկսն լուասցէ զմարմին իւր ջրով. և ընդ մտանել արևուն մտցէ 'ի բանակն։ 12 *Եւ տեղի յայտ լիցի քեզ արտաքոյ բանակին. և ելցես դու արտաքս։ 13 *Եւ ցից լինիցի զգօտւոյ քում. և եղիցի յորժամ նստիցիս արտաքս, փորեսցես նովաւ, և ածեալ ծածկեսցես զաղտեղութի̅ քո։ 14 *Զի Տ̅ր Ա̅ծ քո շրջի ընդ բանակն քո փրկել զքեզ. և մատնել զթշնամիս քո առաջի երեսաց քոց. և եղիցի բանակն քո սուրբ՝ և ոչ երևեսցի 'ի միջի քում աղտեղութի̅ իրացն. և դարձուսցէ 'ի քէն։ 15 *Մի մատնեսցես զծառայ Տ̅ն իւրում, որ յաւելցի 'ի քեզ 'ի տեառնէ իւրմէ։ 16 *Ընդ քեզ բնակեսցի՝ և ընդ քեզ զետեղեսցի՝ յամենայն տեղւոջ ուր և հաճոյ իցէ նմա՝ և մի նեղիցէք զնա։ 17 *Մի լինիցի բոզ 'ի դստերաց ի̅ղ̅ի. և մի պոռնիկ յուստերաց ի̅ղ̅ի. մի լինիցի ձօնի 'ի դստերաց ի̅ղ̅ի. և մի նուիրեալ ոք յուստերաց ի̅ղ̅ի։ 18 *Մի տարցիս զվարձս պոռնկի. և մի զշանսխուրս 'ի տուն Ա̅յ քոյ յա̅մ ուխտս. զի պիղծք են առաջի Տ̅ն Ա̅յ երկոքեան։ 19 *Մի տացես եղբօր քում զարծաթ վաշխիւ. և մի զկերակուր շահիւ, և մի տոկոսեօք։ 20 *Զա̅մ ինչ փոխ տայցես օտարին՝ և եղբօր քում. զի օրհնեսցէ զքեզ Տ̅ր Ա̅ծ քո յա̅մ գործս քո՝ 'ի վերայ երկրին՝ յոր մտանելոց ես ժառանգել զնա։ 21 *Եթէ ուխտիցես ուխտ Տ̅ն Ա̅յ քում, մի յամեսցես հատուցանել զայն՝ զի պահանջելով պահանջեսցէ Տ̅ր Ա̅ծ քո 'ի քէն. և լինիցի քեզ 'ի մեղս։ 22 *Ապա թէ ոչ կամիցիս ուխտել՝ չլինիցին քեզ մեղք։ 23 *Որ ինչ ելանէ ը̅ շրթունս քո, զգո՛յշ լինիջիր՝ և արասցես որպէս ուխտեցեր Ա̅յ քում, ըզ տուրսն զոր խոստացար բերանով քով։ 24 *Եւ եթէ մտանիցես 'ի հունձս ընկերի քոյ, քաղեսցես ձեռօք քովք զհասկն. և մանգաղ մի արկանիցես յոճ ընկերի քոյ։ 25 *Եւ եթէ մտանիցես յայգի ընկերի քոյ, կերիցես խաղող մինչև ցյագել անձին քոյ. բայց յաման մի ամանեսցես։

Նեեմ. 13.1.

Թուոց 22.5.

Ժողով. 5.3.

Մատ. 12.1.

## ԳԼ: ԻԴ։

1 Եւ եթէ առնուցու ոք կին, և մտանիցէ առ նա. և եղիցի եթէ ոչ գտանիցէ շնորհս առաջի նորա. զի եգիտ 'ի նմա իրս անարգութե̅, գրեսցէ նմա գիր ապահարզանի՝ և տացէ 'ի ձեռս նո̅. և արձակեսցէ զնա 'ի տա-

Մատ. 5.31. և 19.7. Մարկ. 10.4.

նէ իւրմէ ։ * Եւ թէ գնացեալ՝ լինի 2 ցի առն այլում ։* Եւ՛ ատիցէ զնա այրն 3 վերջին. գրեսցէ նմա գիր մեկնելոյ. և տացէ 'ի ձեռս նորա. և արձակեսցէ զնա 'ի տանէ իւրմէ. ապա թէ մեռանիցի այրն նորա վերջին՝ որ էառ զնա կնութե ։ * Մի՛ կարասցէ այրն առաջին՝ 4 որ արձակեաց զնա՝ դառնալ անուլ զնա իւր կնութե. յետ պղծելոյն նորա. զի պիղծ է այն առաջի Տն Այ քոյ. և մի՛ պղծիցէք զերկիրն՝ զոր Տր Ած տացէ ձեզ 'ի ժառանգութիւն ։

* Եւ՛ եթէ առնուցու ոք կին նորոգ՝ 5 մի՛ մտցէ 'ի պատերազմ. և մի՛ անկցին 'ի վերայ նորա՝ և մի՛ մի ինչ իր. այլ անպարտ լիցի 'ի տան իւրում. և ուրախ արասցէ զկին իւր՝ զոր էառ ։ * Մի՛ 6 գրաւեսցես զվերին՝ և զներքին երկան. զի զոգիս գրաւէ այնպիսին ։

* Եթէ ըմբռնեսցի այր ոք մարդագող 7 յեղբարց իւրոց յորդւոցն Իէլի, և բռնաբարեալ վաճառեսցէ զնա. մեռցի գողն. և բարձջիք զչարն 'ի միջոյ ձերմէ ։ * Զգո՛յշ լեր անձին քում յարածէ 8 բորոտութեան. զգո՛յշ լինիջիր առնել ըստ ամ օրինին՝ զոր պատմիցեն ձեզ քահանայքն ղևտացիք. զորօրինակ պատուիրեցի ձեզ զգուշանալ առնելոյ ։ *‖ Յիշեցէք՝ զոր արար Տր 9 Ած քո ընդ մարիամ 'ի ճանապարհի ելանելոյն ձերոյ յեգիպտոսէ ։ * Եւ 10 եթէ պարտելով պարտիցի ընկեր քո զինչ և իցէ, մի՛ մտանիցես 'ի տուն նր գրաւել ինչ գրաւ ։* ‖ Այլ արտաքոյ 11 կայցես. և այրն՝ առ որում պարտքն քո իցեն՝ հանցէ զգրաւն արտաքս ։

* Եւ՛ եթէ աղքատ իցէ այրն՝ մի՛ ագցի 12 ընդ գրաւաւն իւրով ։ * Դարձուցանելով 13 դարձուսցես զգրաւ նորա ընդ մտանել արևու. և ննջեսցէ հանդերձիւն իւրով. և օրհնեսցէ զքեզ. և եղիցի քեզ ողորմածութի առաջի Տն Այ քոյ ։ * ‖ Մի՛ զլասցիս զվարձն 14 տնանկին՝ և զկարօտելոյ յեղբարց քոց. կամ՝ յեկաց քաղաքաց քոց.

* Նոյն օրին հատուսցես զվարձս նր. 15 և մի՛ մտանիցէ արեգակն 'ի վերայ այնորիկ. զի տնանկ է. և այնէ յոյս նր. և մի՛ բողոք հարկանիցէ զքէն առ Տր. և մի՛ լինիցի այն քեզ 'ի մեղս ։

*‖ Մի՛ մեռցին հարք ընդ որդւոց. և 16 մի՛ որդիք մեռանիցին ընդ հարց. իւրաքանչիւր ոք 'ի մեղս իւրում մեռանիցի ։* Մի՛ խոտորեսցես զիրաւունս 17 եկին. և որբոյ. և այրւոյ ։ և մի՛ գրաւեսցես զձորձս այրւոյն ։ * Քանզի ծառայ 18 էիր դու յերկրին եգիպտացւոց. և փրկեաց զքեզ Տր Ած քո անտի. վասն այնորիկ ես պատուիրեմ քեզ

19 առնել զբանս զայս ։ * ‖ Եւ՛ եթէ հնձեսցես զհունձս յանդի քում, և մոռասցի որայ յանդի քում՝, մի՛ դառնայցես անդրէն առնուլ զնա. աղքատին, և եկի, և այրւոյ, և որբոյ եղիցի այն. զի օրհնեսցէ զքեզ Տր Ած քո 20 յամենայն գործս ձեռաց քոց ։ * Եւ եթէ կթեսցես զայգի քո. մի՛ ճռաքաղ առնիցես զկնի քոյ. եկին, և որբոյ, և այրւոյ եղիցի այն. (և յիշեսցես զի ծառայ էիր յերկրին եգիպտացւոց. վասն այնորիկ ես պատուիրեմ 21 քեզ առնել զբանս զայս ։) * Եւ՛ եթէ կթեսցես ձէթ. մի՛ դարձցիս անդրէն պտղաքաղ առնել զկնի քո. եկին, և 22 որբոյ, և այրւոյ եղիցի այն ։ * Եւ՛ յիշեսցես՝ զի և դու ծառայ էիր յերկրին եգիպտացւոց. վն այնորիկ ես պատուիրեմ՝ քեզ առնել զբանս զայս ։

## ԳԼ ։ ԻԵ ։

1 Եւ՛ եթէ լինիցի հակառակութի 'ի մէջ մարդկան. մատիցեն յատեան և դատեսցին. և արդարացուցեն զարդարն. և պարտաւորեսցեն 2 զամպարիշտն ։ * Եւ եղիցի թէ արժանի իցէ գանի ամպարիշտն, նստուցեն զնա առաջի դատաւորացն. և հարցեն զնա առաջի նր ըստ ամպարշտութե 3 նորա ։ * ‖ Թուո՛վ քառասուն և այլ մի՛ յաւելուցուն. ապա թէ յաւելուցուն հարկանել զնա աւելի քան զայն, անարգութի լիցի եղբօրն քում 4 առաջի քո ։* ‖ Մի՛ կապեսցես զցուռկ 5 եզին կալոտւոյ ։ * ‖ Եւ՛ եթէ բնակեսցին եղբարք 'ի միասին, և մեռանիցի միոք 'ի նոցանէ. և զաւակ ոչ իցէ նր, մի՛ լինիցի կին մեռելոյն արտաքոյ առն ումեք՝ որ մերձաւոր չիցէ նորա. այլ եղբայր առն իւրոյ մտցէ առ նա. և առցէ զնա իւր կնութե. և բնակես- 6 ցի ընդ նմա ։ * Եւ եղիցի մանուկն՝ որ ծնանիցի՝ հաստատեալ յանուն վախճանելոյն՝ և մի՛ ջնջեսցի անուն 7 նորա յԻսրայէլէ ։ * Ապա թէ ոչ կամիցի այրն առնուլ զկին եղբօր իւրոյ՝ ելցէ կինն 'ի դուռն անդր առ ծերակոյտն՝ և ասասցէ. ‖ ոչ կամի եղբայր առն իմոյ կանգնել զանուն եղբօր 8 իւրոյ 'ի մէջ Իէլի ։* Եւ՛ կոչեսցեն զնա ծերակոյտ քաղաքին իւրոյ, և խօսեսցին ընդ նմա. և նա կացցէ՝ և ասիցէ. 9 ոչ կամիմ առնուլ զդա ։* Եւ՛ մատուցեալ կին եղբօր նր առաջի ծերոյն, հանցէ զկօշիկ մի յոտանէ նր. և թքցէ ընդ երես նորա. և պատասխանի տուեալ ասասցէ. այսպէս արասցեն առն,

որ

‖ Թուոց 12.10. ‖ Ելից 22.26. ‖ Ղևտ. 19.13. Տոբ. 4.15. ‖ 4 Թագ. 4. 1. 2 Մնաց. 25.4. Եզեկ. 18.20. ‖ Ղևտ. 23.22. ‖ 2 Կոր. 11.24. ‖ 1 Կոր. 9. 9. 1 Տիմ. 5.18. ‖ Մատ. 22.24. Մարկ. 12.19. Ղուկ. 20.28. ‖ Հռութ 4. 5.

որ ոչ շինիցէ զտուն եղբօր իւրոյ։ 10 *Եւ կոչեսցի անուն նորա 'ի մէջ Իէլի տուն բոկացելոյ։ 11 *Եւ եթէ կռուեսցին արք ընդ միմեանս՝ այր ընդ եղբօր իւրում. և մատուցեալ կին միոյ 'ի նոցանէ թափել զայր իւր 'ի ձեռաց այնորիկ՝ որ հարկանիցէն զնա, և ձգեալ զձեռն բուռն հարկանիցէ զերկուորեաց նորա։ 12 *Հատանիցես զձեռն. և մի խնայեսցէ 'ի նա ակն քո։ 13 *Մի լինիցի յամանի քում կշիռ, և կշիռ. մեծ կամ փոքր։ 14 *Եւ մի լինիցի 'ի տան քում չափ, և չափ. մեծ կամ փոքր։ 15 *Կշիռ ստոյգ և արդար եղիցի քեզ. և չափ ստոյգ և արդար եղիցի քեզ. զի բազմօրեայ եղիցիս 'ի վերայ երկրին՝ զոր Տր Ա.Ծ քո տացէ քեզ 'ի ժառանգութիւն։ 16 *Զի պիղծ է Տն Ա.Ծ քում ամ, որ առնէ զայն՝ և ամ որ առնէ զանիրաւութիւն։ 17 *‖Յուշ լիցի քեզ՝ զոր արարն Ամաղէկ. 'ի ճանապարհի ելանելոյն քո յեգիպտոսէ։ 18 *Զիարդ ընդդէմ եկաց քեզ 'ի ճանապարհին՝ և կոտորեաց զվերջինս քո. և զաշխատեալսն զկնի քո. և դու քաղցեալ և աշխատեալ էիր. և ոչ երկեաւ յԱ.Ծ։ 19 *Եւ եղիցի յորժամ հանգուցանիցէ զքեզ Տր Ա.Ծ քո յամ թշնամեաց քոց՝ որք շուրջ զքև իցեն՝ յերկրին զոր Տէր Ա.Ծ քո տացէ քեզ վիճակաւ 'ի ժառանգութիւն, ջնջեսցես զանուն Ամաղէկայ 'ի ներքոյ երկնից. և մի մոռասցիս։

‖ Ելից. 17.8.

## ԳԼ։ ԻԶ։

1 Եւ եղիցի եթէ մտանիցես յերկիրն զոր Տր Ա.Ծ քո տացէ քեզ 'ի ժառանգութիւն, և ժառանգեսցես զնա. և բնակեսցես 'ի նմա։ 2 *Առցես զառաջինս պտղոց երկրին քոյ՝ զոր Տր Ա.Ծ քո տացէ քեզ. և արկցես 'ի կողով. և գնասցես 'ի տեղին՝ զոր ընտրեսցէ Տր Ա.Ծ անուանել զանուն իւր անդ։ 3 *Եւ երթիցես առ քահանայն. որ կայցէ յաւուրսն յայնոսիկ. և ասասցես ցնա։ գոհանամ այսօր զՏէ Ա.Ծ իմմէ. զի մտի յերկիրն զոր երդուաւ Տր հարցն մերոց տալ մեզ։ 4 *Եւ առցէ քահանայն զկողովն 'ի ձեռաց քոց. և դիցէ զնա առաջի սեղանոյ Տն Ա.Ծ քոյ։ 5 *Եւ պատասխանի տուեալ ասասցես առաջի Տն Ա.Ծ քո. զասորիս եթող հայր իմ, և էջ յեգիպտոս. և պանդխտեցաւ անդ սակաւ ինչ թուով. և եղև անդ յազգ մեծ. և բազմացաւ անդ յոյժ յոյժ։ 6 *Եւ չարչարեցին զմեզ եգիպտացիք. լլկեցին զմեզ՝ և եդին 'ի վր մեր գործ խստու-

7 թեան։ *Եւ աղաղակեցաք առ Ա.Ծ հարցն մերոց. և լուաւ Տր ձայնի մերում, և ետես զտառապանս մեր՝ և զաշխատութիւն մեր և զնեղութիւնս։ 8 *Եւ եհան զմեզ Տէր յեգիպտոսէ ինքնին զօրութբ մեծաւ. և հզօր ձեռամբ՝ և բարձր բազկաւ. և մեծամեծ տեսլեամբք. և նշանօք և արուեստիւք։ 9 *Եւ էած զմեզ 'ի տեղիս յայս. և ետ մեզ զերկիրս զայս. երկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր։ 10 *Եւ արդ ահաւասիկ բերի զպտուղ արդեանց երկրին՝ զոր ետ ինձ Տր. երկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր։ և երկիր պագցես անդ առաջի Տն Ա.Ծ քոյ։ 11 *Եւ ուրախ լիցիս անդ յամ բարութիւնս՝ զորս ետ քեզ Տր Ա.Ծ քո՝ և տան քում. դու՝ և ղևտացին՝ և պանդուխտն, որ 'ի քեզ։ 12 *Եւ եթէ կատարեսցես տասանորդել զամ տասանորդս երկրի քոյ, յամին երրորդի կրկին տասանորդեսցիս։ ղևտացւոյն՝ և եկին՝ և որբոյ՝ և այրւոյ։ և կերիցեն 'ի քաղաքս քո՝ և յագեսցին։ 13 *Եւ ասասցես առաջի Տն Ա.Ծ քոյ՝ սրբեցի 'ի բաց զսրբութիւնս 'ի տանէ իմմէ. ‖ և ետու զայն ղևտացւոյն. և եկին՝ և որբոյ՝ և այրւոյ. ըստ ամենայն պատուիրանաց Տն Ա.Ծ՝ զորս պատուիրեալ էր ինձ. ոչ անցի զպատուիրանաւ քով։ և ոչ մոռացայ։ 14 *Եւ ոչ կերի 'ի վիշտս 'ի նոցանէ։ և ոչ ընծայեցի 'ի նոցանէ պղծոյն. և ոչ ետու 'ի նոցանէ մեռելոյ։ լուայ ձայնի Տն Ա.Ծ իմոյ. և արարի որպէս պատուիրեցեր ինձ։ 15 *‖Արդ՝ հայեա՛ց 'ի սրբոյ բնակութենէ քումմէ յերկնից. և օրհնեա՛ զժողովուրդ քո զԻէլ. և զերկիրն՝ զոր ետուր նոցա. որպ երդուար հարցն մերոց տալ մեզ՝ զերկիր՝ որ բղխէ զկաթն և զմեղր։ 16 *Յաւուր յայսմիկ պատուիրեաց մեզ Տր Ա.Ծ մեր՝ առնել զամ իրաւունս զայսոսիկ՝ և զդատաստանս. և պահեսջիք՝ և արասջիք զսոսա յամ սրտէ ձերմէ. և յամենայն անձնէ ձերմէ։ 17 *Զտր Ա.Ծ քո ընտրեա՛ այսօր լինել քեզ Ա.Ծ, և գնասջիր 'ի ճանապարհս նր. և պահեսջիր զիրաւունս և զդատաստանս նր՝ լսել ձայնի նր։ 18 *‖Եւ Տր ընտրեաց զքեզ այսօր լինել նմա ժողովուրդ սեպհական՝ որպէս և խոստացաւ քեզ. պահել զամ պատուիրանս նորա։ 19 *Եւ լինել քեզ 'ի վեր քան զամ ազգս. որպէս արար զքեզ անուանի և բարգաւաճ, և փառաւոր՝ լինել քեզ ժողովուրդ սր Տն Ա.Ծ քում. որպ և խոստացաւ քեզ։

‖ Վեր. 14. 29.

‖ Եսայ. 63.15. Բարուք 2.16.

‖ Վեր. 7. 6.

## ԳԼ. ԻԷ.

1 Եւ պատուիրեաց մովսէս և ծերակոյտն իսրայէլի և ասէ. պահեցէք զամ պատուիրանս՝ զորս ես պատուիրեմ ձեզ այսօր. 2 *Եւ եղիցի յաւուր յորում անցանիցես ընդ յորդանան, յերկիրն զոր Տր Ած քո տացէ քեզ՝ կանգնեսցես անդ քարինս մեծամեծս. և բռեսցես զնս բռով. 3 *Եւ գրեսցես ՚ի վր քարանցն զամ պատգամս օրինացս այսոցիկ. յորժամ անցանիցէք ընդ յորդանան. ՚ի ժամանակի իբրև մտանիցէք յերկիրն՝ զոր Տէր Ած հարցն ձերոց տացէ քեզ՝ երկիր, որ բղխէ զկաթն և զմեղր. որպ խոստացաւ Տր Ած հարց քոց տալ քեզ. 4 *Եւ եղիցի՝ յորժամ անցանիցէք ընդ յորդանան, կանգնեսջիք զքարինսն զայնոսիկ՝ զորս ես պատուիրեմ ձեզ այսօր, ՚ի լերինն գեբաղ. և բռեսջիք զնս բռով. 5 *‖Եւ շինեսցես անդ զսեղան Տն Այ քոյ. սեղան ՚ի քարանց. և մի հպեսցի ՚ի նոսա երկաթ. 6 *Ի բոլորակ վիմօք շինեսցես զսեղանն Տն Այ քոյ. և հանցես ՚ի վր նորա ողջակէզս Տն Այ քում. 7 *Եւ զենցես անդ զզենումն փրկութե Տն Այ քում. և կերիցես, և յագեսցիս անդ. և ուրախ լիցիս առաջի Տն Այ քոյ. 8 *Եւ գրեսցես ՚ի վր քարանցն զամ զօրէնս յայտնապէս յոյժ. 9 *Եւ խօսեցաւ մովսէս՝ և քահանայքն՝ և ղևտացիք՝ ընդ ամ իսրայէլի և ասեն. լուռ լեր՝ և լուր իսրայէլ. յաւուր յայսմիկ եղեր ժողովուրդ Տն Այ քոյ. 10 *Եւ լուիցես ձայնի Տն Այ քոյ. և արասցես զամ պատուիրանս նր և զիրաւունս նր՝ զորս ես պատուիրեմ քեզ այսօր. 11 *Եւ պատուիրեաց մովսէս ժողովրդեանն յաւուր յայնմիկ՝ և ասէ. 12 *Սոքա կացցեն օրհնել զժողովուրդն ՚ի լերինն գարիզին. յորժամ անցանիցէք ընդ յորդանան. շմաւօն. ղևի՝ յուդայ. իսաքար. յովսէփ. և բենիամին. 13 *Եւ սոքա կացցեն ՚ի վերայ անիծիցն, ՚ի լերինն գեբաղ. ռուբէն. գադ. ասեր. զաբուղոն. դան. և նեփթաղիմ. 14 *‖Եւ պատասխանի տուեալ ղևտացւոցն՝ ասիցեն մեծաձայն ամ իսրայէլի. 15 *Անիծեալ լիցի մարդն՝ որ արասցէ դրօշեալս և ձուլածոյս պիղծ է Տն ձեռագործ ճարտարի, և դնիցէ զնա ՚ի թաքստեան. և պատասխանի տուեալ ժողովրդեանն ասասցեն՝ եղիցի. 16 *Անիծեալ՝ որ անարգեսցէ զհայր իւր՝ կամ զմայր իւր. և ասասցէ ամ ժողովուրդն, եղիցի. 17 *Անիծեալ՝ որ խոտորեսցէ զիրաւունս եկին և որբոյ՝ և այրւոյ. և ասասցէ ամ ժողովուրդն. եղիցի. 18 *Անիծեալ՝ որ փոխեսցէ զսահմանս ընկերի իւրոյ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 19 *Անիծեալ՝ որ մոլորեցուսցէ զկոյրն ՚ի ճանապարհէ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 20 *Անիծեալ՝ որ ննջեսցէ ընդ կնոջ հօր իւրոյ. զի յայտնեաց զամերկութս հօր իւրոյ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 21 *Անիծեալ՝ որ ննջեսցէ ընդ ամենայն անասնոյ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 22 *Անիծեալ՝ որ ննջեսցէ ընդ քեռ իւրում, որ առ ՚ի հօրէ իցէ. կամ առ ՚ի մօրէ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 23 *Անիծեալ՝ որ ննջիցէ ընդ զոքանչի իւրոյ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 24 *Անիծեալ՝ որ հարկանէ զընկեր իւր նենգութք. և ասասցէ ամենայն ժողովուրդն՝ եղիցի. 25 *Անիծեալ՝ որ առնուցու զկաշառ հարկանել զանձն արեան արդարոյ. և ասասցէ ամ ժողովուրդն՝ եղիցի. 26 *‖Անիծեալ ամ մարդ՝ որ ոչ կացցէ յամենայն բանս օրինացս այսոցիկ՝ առնել զնոսա. և ասասցէ ամենայն ժողովուրդն՝ եղիցի.

‖ Ելից. 20. 25. Յեսու. 8. 31.

‖ Դանիէ. 9. 13.

‖ Գաղ. 3. 10.

## ԳԼ. ԻԸ.

1 Եւ ‖եղիցի եթէ լսելով լուիցէք ձայնի Տն Այ մերոյ, զգուշանալ և առնել զամ պատուիրանս նր, զորս ես պատուիրեմ ձեզ այսօր, տացէ զքեզ Տր Ած քո ՚ի վեր քան զամ ազգս երկրի. 2 *Եւ եկեսցեն ՚ի վերայ քո ամ օրհնութիքս այսոքիկ. և գտցեն զքեզ՝ եթէ լուիցես ձայնի Տն Այ քոյ. 3 *Օրհնեալ լիցիս դու ՚ի քաղաքի՝ և օրհնեալ յանդի. 4 *Օրհնեալ լիցին ծնունդք որովայնի քոյ. և արդիւնք երկրի քոյ. անդեայք արջառոյ քոց. և հօտք ոչխարաց քոց. 5 *Օրհնեալ լիցին շտեմարանք քո. և համբարք քո. 6 *Օրհնեալ լիցիս դու՝ յելանել և ՚ի մտանել քում. 7 *Մատնեսցէ Տր Ած քո զթշնամիս քո՝ և զհակառակորդս քո խորտակեալս առաջի երեսաց քոց. ընդ մի ճանապարհ ելցեն առ քեզ, և ընդ եօթն ճանապարհս փախիցեն յերեսաց քոց. 8 *Առաքեսցէ Տր ՚ի վր քո զօրհնութի ՚ի շտեմարանս քո. և յամ յինչ ուր մխեսցես զձեռն քո ՚ի վր երկրին՝ զոր Տր Ած քո տացէ քեզ. 9 *Կանգնեսցէ զքեզ Տր Ած քո իւր ժողովուրդ սբ. որպ երդուաւ հարցն քոց. եթէ լուիցես ձայնի Տն Այ մերոյ՝ և գնասցես ՚ի ճանապարհս նր. 10 *Եւ տեսցեն ամ ազգք երկրի՝ զի անուն

‖ Ղեւ. 26. 3.

նուն Տն կոչեցեալ է 'ի վր քո. և երկիցեն 'ի քէն: 11 *Եւ բազմացուսցէ զքեզ Տր Ած քո 'ի բարութիւն՝ ծննդեամբք որովայնի քոյ. և արդեամբք երկրի քոյ. և ծննդեամբք խաշանց քոց. 'ի վր երկրին զոր երդուաւ Տր հարցն քոց տալ քեզ. ըստ աւուրց երկնից 'ի վր երկրի: 12 *Բացցէ քեզ Տր զգանձն բարութեան իւրոյ զերկինս. տալ անձրև 'ի ժամանակի իւրում երկրին քոյ. օրհնել զամ գործս ձեռաց քոց. և տացես փոխ ազգաց բազմաց. և դու ո՛չ առնուցուս փոխ: 13 *Եւ իշխեսցես ազգաց բազմաց. և քեզ մի՛ իշխեսցեն: Հաստատեսցէ զքեզ Տէր Ած քո 'ի գլուխ, և ո՛չ 'ի վերջ: և եղիցիս 'ի վեր, և ո՛չ 'ի խոնարհ. եթէ լուիցես պատուիրանաց Տն Այ քոյ. զորս ես պատուիրեմ քեզ այսօր պահել՝ և առնել: 14 *Եւ ո՛չ անցանիցես զամ բանիւք՝ զոր ես պատուիրեմ քեզ այսօր՝ ո՛չ յաջ և ոչ յահեակ. երթալ զհետ աստուծոց օտարաց՝ պաշտել զնոսա: 15 *Եւ եղիցի եթէ ոչ լուիցես ձայնի Տն Այ քոյ, պահել և առնել զամ պատուիրանս նր՝ զորս ես պատուիրեմ քեզ այսօր, եկեսցեն 'ի վր քո անէծքս այսոքիկ՝ և հասցեն քեզ: 16 *Անիծեա՛լ լիջիր դու 'ի քաղաքի՝ և անիծեալ յանդի: 17 *Անիծեալ շտեմարանք քո՝ և համբարք քո. 18 *Անիծեալ ծնունդք որովայնի քոյ՝ և արդիւնք երկրի քոյ. և անդեայք արջառոց քոց՝ և հօտք ոչխարաց քոց: 19 *Անիծեալ լիջիր դու 'ի մտանել՝ և անիծեալ յելանել: 20 *Առաքեսցէ քեզ Տր զնուաղութիւն՝ և զկարօտութիւն և ծախս 'ի վր ամի՝ յոր մխեսցես զձեռն քո. և զոր ինչ առնիցես. մինչև սատակեսցէ զքեզ Տր. մինչև կորուսցէ զքեզ վաղվաղակի վս չարուէ գնացից քոց՝ զի թողեր դու զիս: 21 *Խանձեցուսցէ Տր 'ի քեզ մահ. մինչև սատակեսցէ զքեզ Տր յերկրէն՝ յոր դու մտանելոց ես ժառանգել զնա: 22 *Հարցէ զքեզ Տր տարակուսանօք. և ջերմամբ. և սարսռով. և խեթիւք և երկիւղիւ. և խորշակաւ. և գունով: և հալածեսցեն զքեզ մինչև կորուսցեն զքեզ: 23 *Եւ եղիցին 'ի վր գլխոյ քոյ երկինք պղնձի. և երկիր 'ի ներքոյ քո երկաթի: 24 *Տացէ Տէր զանձրև երկրի քոյ փոշի: և հող յերկնից իջցէ 'ի վր քո. մինչև սատակեսցէ զքեզ՝ և կորուսցէ զքեզ: 25 *Տացէ զքեզ Տր 'ի պարտութիւն առաջի թշնամեաց քոց. և ընդ մի ճանապարհ ելցես 'ի վերայ նր. և ընդ եօթն ճանապարհ փախիցես յերեսաց նոցա. և եղիցիս ցրուեալ ընդ ամ թագաւորութիւնս երկրի: 26 *Եւ եղիցին մեռեալք ձեր կերակուրք թռչնոց երկնից՝ և գազանաց երկրի. և ո՛չ ոք իցէ որ ընդոստուցանիցէ: 27 *Հարցէ զքեզ Տր կեղով եգիպտացւոցն. և թանչիւք. և զայրացեալ քոսով՝ և մնով. զի մի՛ կարասցես բժշկիլ: 28 *Հարցէ զքեզ Տր յիմարութբ: և շլացութբ. և ապշութբ մտաց: 29 *Եւ խարխափեսցես 'ի միջօրէի որպէս խարխափիցէ կոյր 'ի խաւարի: և թէ ոչ ուղղեսցես զճանապարհս քո. և եղիցիս յայնժամ զրկեալ և յափշտակեալ զամ աւուրս. և ո՛չ ոք իցէ՝ որ օգնիցէ քեզ: 30 *Առնուցուս զկին՝ և այլ այր հանիցէ զնա 'ի քէն: շինեսցես զտուն, և մի՛ բնակեսցիս 'ի նմա. տնկեսցես զայգի. և մի՛ կթեսցես զնա: 31 *Արջառ քո սպանեալ առաջի քո. և մի՛ կերիցես 'ի նմանէ: էշ քո յափշտակեալ 'ի քէն. և մի՛ դարձցի առ քեզ: ոչխար քո մատնեալ թշնամեաց քոց. և ո՛չ ոք իցէ՝ որ օգնիցէ քեզ: 32 *Ուստերք քո՝ և դստերք քո մատնեալք ազգի օտարի. և աչք քո կկոցեալ հայիցին 'ի նոսա. և ո՛չ հասանիցի ձեռն քո: 33 *Զբերս երկրի քոյ՝ և զամ վաստակս քո կերիցէ ազգ, զոր դու ո՛չ գիտիցես. և եղիցիս զրկեալ և խորտակեալ զամ աւուրս: 34 *Եւ եղիցես յիմարեալ վասն տեսլեանց աչաց քոց՝ զորս տեսանիցես: 35 *Հարցէ զքեզ Տր չարաչար կեղով 'ի ծունկս և 'ի սրունս. և ո՛չ կարասցես բժշկիլ՝ 'ի թաթից ոտից քոց մինչև ցգլուխ քո: 36 *Տարցէ զքեզ Տր՝ և զիշխանսն՝ զորս կացուսցես 'ի վր քո՝ յազգս զորս ո՛չ գիտիցես դու՝ և ո՛չ հարք քո. և պաշտեսցես անդ զաստուածս օտարս. զփայտեղէնս և զքարեղէնս: 37 *Եւ եղիցիս յառակ՝ և 'ի ցոյց՝ և 'ի զրոյց՝ 'ի մէջ ամ ազգաց՝ յորս տանիցի զքեզ Տր անդր: 38 *Սերմն բազում հանցես յանդի, և սակաւ ժողովեսցես՝ զի կերիցէ զայն մարախ: 39 *Այգիս տնկեսցես և գործեսցես, և գինի ո՛չ արբցես. և մի՛ ուրախ լինիցիս 'ի նմանէ. զի կերիցէ զայն որդն: 40 *Եւ եղիցին ձիթենիք յամ սահմանս քո, և իւղով ո՛չ օծցիս. զի թափեսցին ձիթենիքն քո: 41 *Ուստերս, և դստերս ծնցիս, և ո՛չ լինիցին քո՝ քանզի երթիցեն 'ի գերութիւն: 42 *Զամ ծառաստունկ քո՝ և զարդիւնս երկրի քոյ հարցէ թրթուր: 43 *Եկն որ 'ի քեզ իցէ, ելցէ քան զքեզ 'ի վեր 'ի վեր. և դու իջցես 'ի վայր 'ի վայր: 44 *Նա տացէ քեզ փոխ, և դու ո՛չ տացես նմա փոխ: նա եղիցի գլուխ. և

Ղևտ. 26. 14. Ողբ. 2. 17. Բարուք 1. 20. Մաղաք. 2. 2.

Միքիա 6. 15. Անգէոս 1. 6.

և դու եղիցիս ՚ի վերջ։ 45 * Եւ եկեսցեն ՚ի վերայ քո անէծքս այսոքիկ՝ և հալածեսցեն զքեզ. և հասցեն քեզ մինչև սատակեսցեն զքեզ՝ և մինչև կորուսցեն զքեզ։ զի ոչ լուար ձայնի Տն Այ քոյ. պահել զպատուիրանս նորա և զիրաւունս նորա՝ զորս պատուիրեաց քեզ։ 46 * Եւ եղիցին ՚ի քեզ նշանք և արուեստք. և ՚ի զաւակի քում մինչև յաւիտեան։ 47 * Փոխանակ զի ոչ պաշտեցեր զՏր Ած քո ուրախութբ և ճշմարտիւ սրտիւ։ վասն բազմութեան իրաց ամենեցուն։ 48 * Պաշտեսցես ըզ թշնամիս քո՝ զորս առաքեսցէ ՚ի վր քո Տր. ՚ի սով և ՚ի ծարաւ՝ և ՚ի մերկութեան և ՚ի նուաղութեան ամի։ և դիցէ զանուր երկաթի ՚ի պարանոցի քում մինչև սատակեսցէ զքեզ։ 49 * Ածցէ ՚ի վերայ քո զազգ ՚ի հեռաստանէ ՚ի ծագաց երկրի իբրև զխոյանալ արծուոյ. ազգ որոյ ոչ լսիցես զձայն նր։ 50 * Ազգ ժպիրհ երեսօք. որ ոչ աչառիցէ երեսաց ծերոյ. և ոչ ողորմիցի տղայոյ։ 51 * Եւ կերիցէ զծնունդս խաշանց քոց. և զարդիւնս երկրի քոյ. և ոչ թողուցու քեզ ցորեան. գինի. իւղ. զանդեայս արջառոց քոց՝ և զհօտս ոչխարաց քոց, մինչև կորուսցէ զքեզ։ 52 * Եւ նեղեսցէ զքեզ յամ քաղաքս քո, մինչև կործանեսցին պարիսպք քո բարձրացեալք՝ և ամուրք՝ յորս դու յուսացեալ իցես յամ երկրին քում։ և նեղեսցէ զքեզ յամ քաղաքս քո՝ զորս ետ քեզ Տր Ած քո։ 53 * Եւ ‖ կերիցես զծնունդս որովայնի քոյ։ զմիս ուստերաց քոց և դստերաց քոց՝ զորս ետ քեզ Տր, յանձկութեան քում, և ՚ի նեղութեան քում, որով նեղեսցէ զքեզ թշնամին քո։ 54 * Գիրգն որ ՚ի քեզ՝ և փափուկն յոյժ՝ չարակնեսցէ յեղբայր իւր և ՚ի կին ծոցոյ իւրոյ. և ՚ի մնացեալ որդիսն՝ որք իցեն նմա։ 55 * Տալ միում ՚ի նոցանէ ՚ի մարմնոց որդւոց իւրոց յորոց ուտիցէ. վասն չմնալոյն նմա ինչ՝ յանձկութեան քում և ՚ի նեղութեան, որով նեղիցեն զքեզ թշնամիքն քո յամ քաղաքս քո։ 56 * Եւ գիրգն որ ՚ի քեզ՝ և փափուկն յոյժ, որոյ ոչ իցէ տեղի իւրոյ առեալ զփորձ դնելոյ ՚ի վերայ երկրի՝ վն փափկութեան իւրոյ և գրգութեան, չարակնեսցէ յայր ծոցոյ իւրոյ. և յուստրն իւր և ՚ի դուստր։ 57 * Եւ զաղտն ելեալ ՚ի միջոյ իւրմէ, և զծնունդս՝ զոր ծնանիցի՝ խորովեսցէ ՚ի նոցանէ՝ և կերիցէ. և վն նուաղութեան յամէ թաքուցէ յանձկութենէ և ՚ի նեղութենէ. որով նեղիցէ զքեզ թշնամին յամ քաղաքս քո։ 58 * Եւ ե-թէ ոչ լուիցէք առնել զամ բանս օրինացս այսոցիկ, զգրեալս ՚ի գիրս յայսմիկ, երկնչել ՚ի պատուականն և ՚ի սքանչելի անուանէ Տն Այ քոյ։ 59 * Նորանշան արասցէ Տր զհարուածս քո. և զհարուածս զաւակի քոյ. զհարուածս մեծամեծս և զարմանալիս. և զցաւս չարաչարս և զկարևորս։ 60 * Եւ ածցէ ՚ի վր քո զամենայն ախտս չարաչարս զեգիպտացւոցն՝ յորմէ սոսկայիրն յերեսաց նոցա. և մնասցեն ՚ի քեզ։ 61 * Եւ զամ հիւանդութիւս. և զամ հարուածս գրեալս ՚ի գիրս օրինացս այսոցիկ ածցէ Տր ՚ի վր քո՝ մինչև սատակեսցէ զքեզ։ 62 * Եւ մնասջիք թուով սակաւք. փոխանակ զի էիք դուք իբրև զաստեղս երկնից բազմութբ. և ոչ լուայք ձայնի Տն Այ ձերոյ։ 63 * Եւ եղիցի որպ ուրախ եղև ՚ի ձեզ Տր բարի առնել ձեզ, և բազմացուցանել զձեզ՝ նոյնպէս ուրախ լինիցի Տէր ՚ի ձեզ՝ սատակել զձեզ. և բարձջիք յերկրէն՝ յոր մտանելոց էք ժառանգել զնա։ 64 * Եւ ցրուեսցէ զքեզ Տր Ած քո ընդ ամ ազգս. ՚ի ծագաց երկրի մինչև ՚ի ծագս երկրի. և ծառայեսցես անդ աստուծոց օտարաց. փայտից և քարանց. զորս ոչ գիտէիր դու՝ և հարք քո։ 65 * Այլև յազգսն յայնոսիկ ոչ հանգուսցէ զքեզ. և ոչ լինիցի կայ թաթից ոտից քոց. և տացէ քեզ սիրտ տրտմեալ. և աչս սոբեալս՝ և անձն հարեալ։ 66 * Եւ եղիցին կեանք քո կախեալ առաջի աչաց քոց. և զարհուրեսցիս զցայգ և զցերեկ. և ոչ հաւատասցես կենացն քոց։ 67 * Ընդ առաւօտս ասիցես՝ թէ Երբ լինիցի երեկոյ. և ընդ երեկոյս ասիցես՝ թէ Երբ լինիցի առաւօտ. ՚ի զարհուրմանէ սրտի քոյ երկնչիցիս. և ՚ի տեսլեանց աչաց քոց զոր տեսանիցես։ 68 * Եւ դարձուսցէ զքեզ Տր անդրէն յեգիպտոս նաւօք. և ընդ ճանապարհ ընդ նոյն ոչ յաւելցիք տեսանել զնա. և վաճառիջիք անդ թշնամեաց ձերոց ՚ի ծառայս և յաղախնայս. և ոչ ոք իցէ՝ որ գնիցէ։

‖ Ողբոց. 4.10. Բարուք 2. 3.

աչ փաղ

## ԳԼ. ԻԹ.

1 Այս բանք են ուխտին՝ զոր պատուիրեաց Տր մովսիսի հաստատել որդւոցն իէլի յերկրին մովաբու. թող զայն ուխտն՝ զոր ուխտեաց նդ ՚ի քորեբ։ 2 * Եւ կոչեաց մովսէս զամենայն որդիսն իէլի և ասէ ցնոսա. ‖ Դուք ձեզէն տեսէք զամ ինչ՝ զոր արար Տր յեգիպտոս առաջի ձեր. ի փարաւոն և ընդ ծառայս նորա՝ և ընդ ամ երկիրն նր։ 3 * Զփորձանսն մեծամեծս՝ զորս

‖ Ելից 19.4.

զորս

զորս տեսին աչք ձեր․ զնշանսն և զար֊ուեստս մեծամեծս զայնոսիկ՝ զձեռն հզօր․ և զբազուկ բարձր ։ 4 *Եւ ոչ ետ ձեզ Տր Ած ձեր զսիրտ գիտելոյ՝ և աչս տեսանելոյ․ և ականջս լսելոյ․ մինչև 5 ցայսօր ։ *Եւ էած զձեզ զքառասուն ամ ընդ անապատն ։ ոչ հնացան հանդերձք ձեր․ և ոչ մաշեցան կօշիկք յոտից ձերոց ։ 6 *Հաց ոչ կերիք․ և գինի և ցքի ոչ արբէք․ զի ծանիջիք թէ 7 ես եմ Տր Ած ձեր ։ *Եւ եկիք մինչև ՚ի տեղիս յայս ։ և ել Սեհոն թագաւոր Եսեբոնայ․ և Ովգ թագաւոր Բասանու ընդդէմ մեր պատերազմաւ․ և 8 հարաք զնս ։ *Եւ առաք զերկիր նց․ և ետու զնա ՚ի ժառանգութի Ռուբենի՝ և Գադայ՝ և կիսոյ ցեղին Մանասէի։ 9 *Եւ զգուշասջիք առնել զամ բանս ուխտիս այսորիկ․ զի իմասջիջիք զամ 10 զոր առնիցէք ։ *Դուք կայք աւադիկ այսօր ամենեքեան առաջի Տն Այ ձերոյ․ ցեղապետք ձեր․ և ծերակոյտք ձեր․ և դատաւորք ձեր․ և ատենադպիրք ձեր․ և ամ այր Իսրայէլի ։ 11 *Եւ կանայք ձեր․ և որդիք ձեր․ և եկն, որ ՚ի միջի ձերում բնակի՝ և ՚ի փայտատ֊կոտորէ ձերմէ մինչև ցջրբեր ձեր ։ 12 *Յանցանել ձեր զուխտիւ Տն Այ քոյ․ և զնզովիւք նորա՝ զոր Տր Ած քո 13 ուխտէ քեզ այսօր ։ *Զի կացուսցէ զքեզ իւր ժողովուրդ․ և նա եղիցի քեզ Ած ոպ և ասաց․ և զոր օրինակ երդուաւ հարցն քոց՝ Աբրահամու՝ և 14 Իսահակայ՝ և Յակոբու ։ *Եւ ոչ ձեզ միայն ուխտեմ ես զուխտս զայս․ և 15 զնզովս զայսոսիկ ։ *Այլ որոց աստ ընդ մեզ իցեն այսօր առաջի Տն Այ մերոյ․ և որոց չիցեն ընդ մեզ այսօր ։ 16 *Զի դուք ինքնին գիտէք՝ ոպ բնակեցաք յերկրին Եգիպտացւոց․ և ոպ անցաք ընդ մէջ ազգացն․ ընդ որս 17 անցիք դուք ։ *Եւ տեսիք զգարշելիս նոցա․ և զկուռս իւրեանց՝ զփայտն և զքար․ զարծաթն և զոսկի․ որ է՝ 18 առ նոսա ։ *Մի ոք իցէ ՚ի ձէնջ այր՝ կամ կին՝ կամ ազգ՝ կամ ցեղ՝ որոյ միտք իւր խոտորեալ իցեն ՚ի Տէ Այ իւրմէ, երթալ պաշտել զդիս ազգացն այնոցիկ ։ մի ոք իցէ ՚ի ձէնջ արմատ ՚ի վեր բուսեալ դառնութե և դա֊ 19 ժանութե ։ *Եւ եղիցի՝ եթէ լուիցէ զպատգամս նզովիցս այսոցիկ․ և խո֊կասցի ՚ի սրտի իւրում՝ և ասիցէ, քաւ֊ութիք եղիցին ինձ, զի եթէ ես ըստ մոլորութե սրտի իմոյ գնայցեմ ։ զի մի կորուսանիցէ մեղաւորն զանմեղն ։ 20 *Եւ ոչ հաճեսցի Ած ներել նմա․ այլ յայնժամ բորբոքեսցի բարկուԹի



21 նորա․ և նախանձ նորա ՚ի մարդն յայն․ և հասցեն նմա ամենայն նզովք ուխտիս այսորիկ․ գրեալք ՚ի գրի օրի֊նացս այսոցիկ․ և ջնջեսցէ Տր զանուն նորա ՚ի ներքոյ երկնից ։ *Եւ զատուսցէ զնա Տր ՚ի չարիս յամ որդւոց Իէի․ 22 ըստ ամ նզովից ուխտիս գրեցելոյ ՚ի գիրս օրինացս այսոցիկ ։ *Եւ ասի֊ցեն ազգքն միւս՝ և որդիքն ձեր՝ որք յարիցեն յետ ձեր․ և օտարոտին, որ գայցէ յերկրէ հեռաստանէ՝ տեսանի֊ցեն զհարուածս երկրին այնորիկ․ և 23 զախտս նց՝ զորս առաքեաց Տր ՚ի վր նց ։ *Ծծումբն և զաղն այրեցեալ՝ յամի ՚ի հող նր, մի սերմանեսցի՝ և մի բուսցի․ և մի ելցէ ՚ի վերայ նորա ամ դեղ դալար ։ ոպ կործանեցան Սոդոմ և Գոմոր․ Ադմայ և Սեբոյիմ, զորս 24 կործանեաց Տր սրտմտութբ և բար֊կութբ ։ *Եւ ասասցեն ամ ազգքն․ ընդէր արար Տէր այնպէս երկրին այնմիկ․ զինչ իցէ սրտմտութի մեծ 25 բարկութեն այնորիկ ։ *Պատասխանի տացեն՝ և ասասցեն․ զի թողին զուխտն Այ հարց իւրեանց․ զոր ուխտեաց հարցն նց․ յորժամ եհան զնս յերկրէն 26 Եգիպտացւոց ։ *Եւ գնացեալ պաշ֊տեցին զաստուածս օտարս․ և երկիր պագին նոցա՝ զոր ոչն ճանաչէին․ և 27 ոչ բաժանեաց նց ։ *Եւ բարկացաւ Տր սրտմտութբ ՚ի վր երկրին այնո֊րիկ․ ածել ՚ի վր նորա ըստ ամ նզո֊վից ուխտիս՝ գրեցելոյ ՚ի մատենի օրի 28 նացս այսոցիկ ։ *Եւ եբարձ զնս Տր յերկրէ իւրեանց՝ բարկութբ և սրտ մտութբ և զայրացմամբ մեծաւ յոյժ․ և մերժեաց զնս յերկիր օտար՝ մինչև 29 ցայժմ ։ *Ծածուկքն Տն Այ մեր֊ում, և յայտնիքն մեզ՝ և որդւոց մե֊րոց յաւիտեան՝ առնել զամ պատ֊գամս օրինացս այսոցիկ ։

Գլ ։ Լ ։

1 Եւ եղիցի եթէ հասանիցեն ՚ի վր քո ամ պատգամքս այսորիկ․ կամ օրհնութիք կամ անէծք՝ զորս ետու առաջի երեսաց քոց, և ընկալցիս ՚ի սիրտ քո ընդ ամ ազգսն՝ ուր ցրուեսցէ 2 զքեզ Տր Ած քո անդ ։ *Եւ դարձցիս առ Տր Ած քո․ և լուիցես ձայնի նր ըստ ամի զոր ես պատուիրեմ քեզ այսօր․ յամ սրտէ քումմէ՝ և յամենայն 3 անձնէ քումմէ ։ *Եւ բժշկեսցէ Տէր զմեղսն քո․ և ողորմեսցի քեզ ։ և դար֊ձեալ ժողովեսցէ զքեզ յամ ազգաց՝ 4 ուր ցրուեաց զքեզ Տր անդր ։ *Եթէ իցէ ցրումն քո ՚ի ծագաց երկրի մինչև ՚ի ծագս երկրի՝ և անտի ժողովեսցէ



Marginal references: Մ երկ․ 8․ 2․ — Յովհ․ ... — Թուոց 21․33․ — Մ երկ․ 3․ 1․ — Ծննդ․ 19․ 24․ — 3․ Թագ․ 9․ 8․ — Երեմ․ 22․8․

Բ2. Մ՛ղ 1.29. Եւ 2.18.

զքեզ Տր Ա.Ծ քո ։ * Եւ անտի առցէ 5 զքեզ Տէր Ա.Ծ քո. և ածցէ զքեզ Տր Ա.Ծ քո յերկիրն՝ զոր ժառանգեցին հարքն քո. և ժառանգեսցես զնա՝ և բարի եղիցի քեզ. և բազմապատիկ արասցէ զքեզ քան զհարս քո ։ * Եւ 6 պարուրեսցէ Տր զսիրտ քո և զսիրտ զաւակի քոյ. սիրել զՏր Ա.Ծ քո յամենայն սրտէ քումմէ՝ և յամենայն անձնէ քումմէ. զի կեցցես դու և զաւակ քո ։ * Եւ տա 7 ցէ Տէր Ա.Ծ քո զնզովս զայս ՚ի թշնամիս քո. և յատելիս քո՝ որք հալածեցին զքեզ ։ * Եւ դու դարձցիս և լուի 8 ցես ձայնի Տն Ա.Յ քոյ ։ և արասցես զպատուիրանս նորա՝ զոր ես պատուիրեմ քեզ այսօր ։ * Եւ աճեցուսցէ 9 զքեզ Տր Ա.Ծ քո յամենայն գործս ձեռաց քոց՝ ծննդովք որովայնի քոյ. և արդեամբք երկրի քոյ. և ծննդովք անասնոց քոց. զի դարձցի ՚ի քեզ Տր Ա.Ծ քո՝ ուրախ լինել քեւ ՚ի բարութիւն՝ որպէս ուրախ եղեւ հարքն քովք ։ * Եթէ 10 լուիցես ձայնի Տն Ա.Յ քոյ, պահել զամենայն պատուիրանս նորա և զիրաւունս նորա, և զդատաստանս նորա, զգրեալս ՚ի գրի օրինացս այսոցիկ ։ եթէ դարձցիս առ Տր Ա.Ծ քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն անձնէ քումմէ ։ * Զի 11 պատուիրանս այս՝ զոր ես պատուիրեմ քեզ այսօր, ոչ ծանրաբեռն ինչ է. և ոչ հեռի ՚ի քէն ։ * Ոչ յերկինս՝ թէ 12 ասիցես ‖ ով ելանիցէ մեզ յերկինս՝ և առնուցու զնա և լուիցուք՝ և արասցուք ։ * Եւ ոչ յայնկոյս ծովու է՝ թէ 13 ասիցես՝ ով անցանիցէ յայնկոյս ծովու՝ և առնուցու մեզ զնա. և լսելի արասցէ մեզ՝ և արասցուք ։ * Մերձ է 14 բանն առ քեզ յոյժ, ՚ի բերան քո և ՚ի սրտի քում. և ՚ի ձեռս քո է առնել զնա ։ * Ահաւասիկ եդու այսօր ա 15 ռաջի երեսաց քոց զկեանս՝ և զմահ. զբարի՝ և զչար ։ * Եւ եթէ լուիցես 16 պատուիրանաց Տն Ա.Յ մերոյ՝ զորս ես պատուիրեմ քեզ այսօր, սիրել զՏր Ա.Ծ քո՝ գնալ ՚ի ճանապարհս նորա, պահել զիրաւունս և զպատուիրանս նր, և զդատաստանս նորա, կեցջիք՝ և բազումք լինիցիք. և օրհնեսցէ զքեզ Տր Ա.Ծ քո յամենայն երկրին՝ յոր մտանելոց ես ժառանգել զնա ։ * Եւ եթէ 17 փոխեսցի սիրտ քո՝ և ոչ լուիցես, և մոլորեալ երկիր պագանիցես աստուծոց օտարաց. և պաշտեսցես զնոսա ։ * Պատմեմ քեզ այսօր. զի կորստեամբ 18 կորնչիցիք. և ոչ լինիցիք բազմօրեայք ՚ի վերայ երկրին՝ յոր դուք անցանէք ընդ Յորդանան ժառանգել զնա ։ * Ունիմ 19 ձեզ վկայ այսօր զերկինս և զերկիր.

Ծննդոց 17. ‖ Հռովմ. 10.6.

զկեանս և զմահ եդու առաջի երեսաց ձերոց. զօրհնութիւն և զանէծս. և ընտրեա զկեանս. զի կեցցես դու և զաւակ քո ։ 20 * Սիրել զՏր Ա.Ծ քո. և լսել ձայնի նր. և ունել զնմանէ. զի այն է կեանք քո. և երկայնութիւն աւուրց քոց. բնակել յերկրին զոր երդուաւ Տր հարցն քոց. Աբրահամու և Իսահակայ և Յակոբայ՝ տալ նոցա ։

## ԳԼ. ԼԱ.

1 Եւ կատարեաց Մովսէս խօսել զամ բանս զայսոսիկ առ ամ որդիսն Իղի ։ 2 * Եւ ասէ ցնս. հարիւր և քսան ամաց եմ ես այսօր. և ոչ ևս կարեմ ելանել և մտանել. քանզի Տէր ասաց ցիս՝ թէ ‖ ոչ անցանիցես ընդ այդ Յորդանան ։ 3 * Տր Ա.Ծ քո երթայ առաջի երեսաց քոց. նա սատակեսցէ զազգսն զայնոսիկ յերեսաց քոց. և ժառանգեսցես զնս. և Յեսու երթայ առաջի 4 երեսաց քոց՝ որպէս խօսեցաւ Տր ։ * Եւ արասցէ Տր ընդ նոսա ‖ որպէս արար ընդ Սեհոն և ընդ Ովգ. ընդ երկոսին թագաւորսն Ամորհացւոց՝ որք էին յայնկոյս Յորդանանու, և ընդ երկիրն նց ։ 5 * Որպէս սատակեսցէ զնս. և մատնեսցէ զնոսա Տր առաջի ձեր. և արասջիք ընդ նոսա որպէս պատուիրեցի ձեզ ։ 6 * Քաջ լեր՝ և զօրացիր. մի երկնչիր. և մի զանգիտեր. և մի զարհուրեսցիս յերեսաց նոցա. զի Տր Ա.Ծ քո ինքնին է՝ որ երթայցէ յառաջագոյն քո ձեզ ՚ի միջի ձերում. ոչ թողցէ զքեզ՝ և 7 ոչ ընդ վայր հարկանիցէ ։ * Եւ կոչեաց Մովսէս զՅեսու՝ և ասէ ցնա առաջի ամ Իղի. ‖ քաջ լեր՝ և զօրացիր. քանզի դու մտանելոց ես առաջի երեսաց ժողովրդեանդ այդորիկ՝ յերկիրն զոր երդուաւ Տր հարցն ձերոց տալ նոցա. և դու ժառանգեցուսցես զնս 8 * Եւ Տր, որ երթալոց է ընդ քեզ, ոչ թողցէ զքեզ. և ոչ ընդ վայր հարցէ. 9 մի երկնչիր, և մի զանգիտեր ։ * Եւ գրեաց Մովսէս զամ բանս օրինացս այսոցիկ ՚ի մատենի. և ետ զայն քահանայից որդւոցն Ղեւեայ. որք բառնային զտապանակ ուխտին Տն. և ծերոց 10 որդւոցն Իսրայէլի ։ * Եւ պատուիրեաց նց Մովսէս յաւուր յայնմիկ՝ և ասէ. յետ եօթն ամի ժամանակի տարւոյն թողութեան ՚ի տօնի տաղաւարահարացն ։ 11 * Ի գումարել ամ Իսրայէլի յանդիման լինելոյ առաջի Տն Ա.Յ քոյ, ՚ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր ընթեռնուցուք զօրէնս զայս առաջի Իղի յա 12 կանջս նոցա ։ * Եկեղեցացուցեալ զժողովուրդն. զարս՝ և զկանայս՝ և զման-

‖ Թուոց 27.13. ‖ Եբր. 3.27. ‖ Թուոց 21.24. ‖ Յեսու 1.6. 3. Թագ. 2.2.

զմանկունս՝ և զեկն որ 'ի քաղաքս ձեր. զի լուիցեն. և ուսանիցին երկնչել 'ի ՏԷ Ա.Ծ մերմէ. և ուսցին առնել զամ պատգամս օրինացս այսոցիկ : 13 *Եւ որդիք նոցա՝ որք ոչ գիտիցեն, լուիցեն՝ և ուսցին երկնչել 'ի ՏԷ Ա.Ծ մերմէ զամ աւուրս՝ որչափ և կեցցեն նք 'ի վ(եր)ա երկրին՝ յոր դուք անցանելոց էք ընդ Յորդանան ժառանգել զնա :

14 *Եւ ասէ Տր ցՄովսէս. ահա մերձեցան աւուրք մահուան քոյ. կոչեա՛ զՅեսու՝ և կացէք առաջի դրան խորանին վկայութե, և հրամայեցից նմա. և գնացին Մովսէս և Յեսու 'ի խորանն վկայութե. և կացին 'ի դրան խորանին վկայութե : 15 *Եւ էջ Տր սեամբ ամպոյ՝ և եկաց առ դրան խորանին վկայութե. և եկաց սիւն ամպոյն առ դրան խորանին : 16 *Եւ ասէ Տր ցՄովսէս՝ ահաւասիկ դու ննջեսցես ընդ հարս քո. և յարուցեալ ժողովուրդդ այդ պոռնկեսցի զհետ աստուծոց օտարաց երկրին յոր մտանիցէ դա 'ի նոսա. և թողուցուն զիս. և ցրիցեն զուխտն իմ, զոր ուխտեցի ընդ դոսա : 17 *Եւ բարկացայց դոցա սրտմտութբ յաւուր յայնմիկ. և լքից զդոսա. և դարձուցից զերեսս իմ 'ի դոցանէ. և եղիցին կերակուր թշնամեաց՝ և գտցեն զդոսա չարիք բազումք և նեղութիք. և ասասցեն յաւուր յայնմիկ. քանզի չէ Տէր Ա.Ծ մեր ընդ մեզ՝ գտին զմեզ չարիքս այսոքիկ : 18 *Եւ ես դարձուցանելով դարձուցից զերեսս իմ 'ի նոցանէ յաւուր յայնմիկ՝ վասն ամ չարեացն՝ զորս արարին. զի դարձան յաստուածս օտարս : 19 *Եւ արդ գրեցէք զբանս օրհնութեանս այսորիկ. և ուսուսջիք զդա որդւոցն Իէլի. և արկջիք զդա 'ի բերան նոցա. զի եղիցի ինձ օրհնութիւդ այդ 'ի վկայութի 'ի մէջ որդւոցդ Իէլի : 20 *Քանզի տարայց զդոսա յերկիրն բարի՝ զոր երդուայ հարցն նոցա. երկիր, որ բղխէ զկաթն և զմեղր. և կերիցեն, և լցեալ յագեսցին. և դառնայցեն յաստուածս օտարս. և պաշտիցեն զնոսա. և զայրացուցանիցեն զիս. և ցրիցեն զուխտն իմ, զոր ուխտեցի նց : 21 *Եւ ընդդէմ կացցէ նց օրհնութիւդ այդ՝ յանդիմանել լինել վկայ. և մի մոռասցի 'ի բերանոց նոցա. և 'ի բերանոյ զաւակի նց. քանզի գիտեմ զչարութի նց. զոր առնեն աստ այսօր, յառաջ քան զտանելն իմ զնս յերկիրն բարութե զոր երդուայ հարցն նոցա : 22 *Եւ գրեաց Մովսէս զօրհնութիւս զայս յաւուր յայնմիկ. և ուսոյց զդա որդւոցն Իէլի :

23 *Եւ պատուիրեաց Մովսէս Յեսուայ որդւոյ Նաւեայ՝ և ասէ. ‖Քաջ լեր՝ և զօրացիր. զի դու տանելոց ես զորդիսն Իէլի յերկիրն՝ զոր խոստացաւ տալ նց Տէր. և նա եղիցի ընդ քեզ : 24 *Եւ իբրև կատարեաց Մովսէս գրել զամ զբանս օրինացս այսոցիկ 'ի մատենի մինչև 'ի սպառ : 25 *Եւ պատուիրեաց ղեւտացւոցն՝ որք կրէին զտապանակ ուխտին Տն. ասէ : 26 *Առեալ զմատեան օրինացդ այդոցիկ՝ դնիցէք 'ի կողմանէ տապանակի ուխտին Տն Ա.Ծ մերոյ. և եղիցի անդ ընդ քեզ 'ի վկայութի : 27 *Զի ես գիտեմ զհեստութի քո՝ և զխիստ պարանոց քո. զի մինչ դեռ ես ընդ ձեզ կենդանի եմ այսօր, դառնացուցիչք էք Ա.Ծակողմանն. որպէս ոչ առաւել և յետ մահուան իմոյ : 28 *Արդ՝ ժողովեցէք առ իս զցեղապետս և զծերս ձեր. և զդատաւորս ձեր. և զատենադպիրս ձեր. զի խօսեցայց յականջս նոցա զամ զբանս զայսոսիկ. և կալայց ձեզ վկայ զերկինս և զերկիր : 29 *Եւ քանզի գիտեմ եթէ յետ վախճանի իմոյ անօրինելով անօրինիցիք. և խոտորիցիք 'ի ճանապարհէն՝ զոր պատուիրեցի ձեզ. և պատահիցին ձեզ չարիքն 'ի վախճանի աւուրց. քանզի առնիցէք զչար առաջի Տն. բարկացուցանել զնա գործովք ձեռաց ձերոց : 30 *Եւ խօսեցաւ Մովսէս յականջս ամենայն եկեղեցւոյն Իսրայէլի զբանս օրհնութեանս այսորիկ մինչև 'ի սպառ :

‖Յեսու 1. 6.

## ԳԼ: ԼԲ.

1 Նայեցարուք երկինք՝ և խօսեցայց. և լուիցէ երկիր զպատգամս բերանոյ իմոյ :

2 *Ակնկալեսցի իբրև զանձրև բարբառ իմ. և իջցէ իբրև զցօղ պատգամք իմ. իբրև զանձրև 'ի վ(եր)ա սիզոյ. և իբրև զտեղատարափ 'ի վ(եր)ա խոտոյ :

3 *Զի անուն Տն կարդացի. տուք օրհնութի Տն Ա.Ծ մերոյ :

4 *Ա.Ծ որոյ ճշմարիտք են գործք նորա. և ամ ճանապարհք նր իրաւամբք : Ա.Ծ հաւատարիմ է. և ոչ գոյ 'ի նմա անիրաւութի. արդար՝ և անարատ է Տր :

5 *Մեղան՝ և ոչ նմա որդիք արատոյ. ազգ թիւր և խոտորեալ :

6 *Զայդ Տն հատուցանէք այդպէս. ժողովուրդ յիմար՝ և ոչ իմաստուն : ոչ նա է հայրն՝ որ ստացաւ զքեզ. արար զքեզ՝ և հաստատեաց զքեզ :

7 *‖Յո՛ւշ լիցին քեզ աւուրքն յաւիտենից. իմացարուք զամն յազգս ազգաց. հարց զհարսն քո՝ և պատմեսցեն քեզ.

‖Յոբ. 8. 8.

և ցծերս քո՝ և ասասցեն քեզ։

8 * Յորժամ բաժանեաց բարձրեալն զազգս ամ. որպէս սփռեաց զորդիսն ադամայ. կացոյց սահմանս ազգաց ըստ թուոյ որդւոց Այ։

9 * Եղև բաժին Տն ժողովուրդ իւր յակոբ. և վիճակ ժառանգութեան իւրոյ իսրայէլ։

10 * Բաւական եղև նմա յանապատի. 'ի ծարաւ տօթոյ յանջրդի պաշտպանեաց զնա։ և խրատեաց՝ և պահեաց զնա իբրև զբիբական։

11 * Իբրև զարծուի 'ի ծածկել զբոյն իւր. և 'ի ձագս իւր գթացաւ։ տարածեաց զթևս իւր՝ և ընկալաւ զնա. և բարձեալ բերէր զնա 'ի վերայ միջնողանց իւրոց։

12 * Տր միայն ածէր զնն. և ո՛չ գոյր ընդ նոսա աստուած օտար։

13 * Եհան զնն 'ի զօրութի երկրի. կերակրեաց զնոսա արդեամբք անդաստանաց։ դիեցոյց մեղր 'ի վիմէ. և իւղ յապառաժ վիմէ։

14 * Կոգի կովուց՝ և կաթն մաքեաց. հանդերձ ճարպով գառանց խոյոց՝ որդւոց ցլուց՝ և նոխազաց։ ընդ ճարպոյ երիկամանց ցորենոյ՝ և զարիւն խաղողոյ ըմպէին գինի։

15 * Եկեր յակոբ՝ և յագեցաւ. յօրացաւ՝ և անկուշեաց սիրելին։ գիրացաւ՝ ստուարացաւ՝ և լայնացաւ. և եթող զՏր Ած զարարիչ իւր. և ապստամբեցաւ յԱյ փրկչէ իւրմէ։

16 * Բարկացուցին զիս օտարոտւովք. և գարշելեօք իւրեանց դառնացուցին զիս։

17 * Զոհեցին դիւաց և ոչ Այ. դից՝ զորս ո՛չ գիտէին. նորք և առժամայնք եկեալ. զորս ո՛չ գիտէին հարք ձեր։

18 * Թողեր զԱծ՝ որ ծնաւ զքեզ. մոռացար զԱծ զկերակրիչն քո։

19 * Ետես Տէր՝ և նախանձեցաւ. և սրտմտեցաւ վն բարկութե ուստերաց և դստերաց իւրոց։

20 * Եւ ասաց՝ դարձուցից զերեսս իմ 'ի նոցանէ. և ցուցից նոցա զինչ լինելոց իցէ 'ի վախճանի աւուրց։ զի ազգ թիւր են. որդիք՝ յորս ո՛չ գոն հաւատք։

21 * Նոքա նախանձեցուցին զիս չաստուածովք. և բարկացուցին զիս կռովք իւրեանց։ ‖ և ես նախանձեցուցից զնն չազգաւ. և անմիտ ժողովրդեամբ բարկացուցից զնոսա։

‖ Երեմ. 15.14. Հռով. 10.19.

22 * Զի հուր բորբոքեալ է 'ի բարկութե իմմէ. այրեսցէ մինչ 'ի դժոխս ներքինս։ կերիցէ զերկիր և զարմտիս նր. բորբոքեսցէ զհիմունս լերանց։

23 * Կուտեցից 'ի նոսա չարիս. և զնետս իմ սպառեցից 'ի նոսա։

24 * Մաշեալք սովով՝ և կերակրով թռչնոց. լարս առանց բժշկութե, և ժանիս գազանաց առաքեցից 'ի նն. սրտմտութբ քարշել վն ընդ երկիր։

25 * Արտաքուստ անզաւակեսցէ զնոսա սուր. և 'ի շտեմարանաց երկիւղ։ զերիտասարդն հանդերձ կուսիւն. և զստնդիացն հանդերձ հաստատելով ծերով։

26 * Ասացի բամ՝ ցրեցից զնն. դադարեցուցից 'ի մարդկանէ զյիշատակս նց։

27 * Թէ ոչ վն բարկութե թշնամեաց. զի մի երկայնակեացք լինիցին. և զի մի բարձրասցին հակառակորդքն՝ և ասիցեն, թէ ձեռն մեր բարձր՝ և ո՛չ Տր արար զայս ամ։

28 * ‖ Զի ազգ խորհրդակորոյսք են. և ո՛չ գոյ 'ի նոսա իմաստութի։

‖ Երեմ. 9.12.

29 * Ոչ խորհեցան 'ի միտ առնուլ զայս. արդ ընկալցին առ յապայ ժամանակս։

30 * Զիարդ հալածեսցէ մի զհազարս. և երկուք շարժեսցեն զբիւրս. եթէ ոչ Ած վաճառեաց զնոսա։

31 * Զի ո՛չ են իբրև զԱծ մեր՝ աստուածք նց. և թշնամիք մեր վատախորհուրդք։

32 * Զի յորթոյ սոդոմայ է որթ նց. և ուռ նոցա՝ 'ի գոմորայ։ խաղող նց խաղող լեղի. և ողկոյզ նց դառնութի։

33 * Սրտմտութի վիշապաց գինի նոցա. և սրտմտութի իժից առանց բժշկութե։

34 * Ո՞չ ապաքէն այս ամ ժողովեալ է առ իս. և կնքեալ կայ 'ի գանձի իմում։

35 * ‖ Յաւուր վրէժխնդրութե հատուցից՝ 'ի ժամանակի յորում սխալեսցի ոտն նց. զի մերձ է օր բարկութե նց. և հասեալ պատրաստեալ կայ ձեզ։

‖ Սիր. 28.1. Հռով. 12.19.

36 * Զի դատեսցէ Տր զժողովուրդ իւր. և ‖ 'ի ծառայս իւր մխիթարեսցի։ զի ետես զնոսա լուծեալս՝ և լքեալս՝ և մատնեալս 'ի գերութի։

Եբր. 10.30. ‖ 2. Մակ. 7.6.

37 * Եւ ասաց Տր՝ ‖ ո՞ւր են աստուածք նոցա. յորս յուսացեալ էին 'ի նոսա։

‖ Երեմ. 2.28.

38 * Զորոց զճարպ զոհից նց ուտէիք. և ըմպէիք զգինի նուէրաց նոցա. յարիցեն օգնեսցեն ձեզ. և եղիցին ձեր թիկունք։

‖ 1. Թագ. 2.6.

39 * Տեսէք՝ տեսէք՝ զի ես եմ. և չիք այլ ոք բաց յինէն։ ‖ ես սպանանեմ, և ես կեցուցանեմ. հարկանեմ, և բժշկեմ. ‖ և ո՛չ ոք իցէ որ հանիցէ 'ի ձեռաց իմոց։

Տոբ. 13.2. ‖ Իմաստ. 16.13.

40 * Զի ամբարձից յերկինս զձեռս իմ. և երդուայց յաջ իմ. և ասացից, կենդանի եմ ես յաւիտեանս։

‖ Յայտ. 10.7.

41 * Զի սրեցից իբրև զփայլակն զսուսեր իմ. և կալցի զդատաստանաց ձեռն իմ.

Իմաստ. 16.15.

իմ. և հատուցից զվրէժս թշնամեաց իմոց. և ատելեաց իմոց հատուցից։

42 *Արբեցուցից զնետս իմ յարենէ. և սուր իմ կերիցէ զմիս յարենէ վիրաւորաց և գերութեան. ՚ի գլխոց իշխանաց թշնամեաց Տն։ ուրախ լերուք երկինք հանդերձ նովաւ. և երկիրպագցեն նմա ամ որդիք Այ։

43 [illegible] 7. 6. *‖ Ուրախ լերուք ազգք ընդ ժողովրդեան նորա. և զօրացուսցեն զնա ամ հրեշտակք Այ։ զի խնդրի վրէժ արեան որդւոց նորա. և խնդրեսցէ զվրէժ՝ և հատուսցէ դատաստանս թշնամեաց. և ատելեացն հատուսցէ. և սրբեսցէ Տր զերկիր ժողովրդեան իւրոյ։ (և գրեաց մովսէս զօրհնութիւնս զայս յաւուր յայնմիկ. և ուսոյց զսա որդւոցն իսրայելի։)

44 *Եւ եմուտ մովսէս ՚ի ժողովուրդն. և խօսեցաւ զամ բանս օրինացս այսոցիկ յականջս ժողովրդեանն. ինքն՝ և յեսու որդի նաւեայ։

45 *Եւ կատարեաց մովսէս խօսել ընդ ամ իսրայելի։

46 *Եւ ասէ ցնա. զգոյշ լերուք սրտիւք ձերովք ամ բանիցս այսոցիկ. զորոց ես դնեմ զվկայութիւն ընդ ձեզ այսօր. զոր պատուիրիցէք որդւոց ձերոց. պահել և առնել զամ բանս օրինացս այսոցիկ։

47 *Զի ոչ եթէ բան ինչ ընդունայն իցէ ձեզ. զի սա է կեանք ձեր. և վասն այսր բանի երկայնօրեայք լինիցիք ՚ի վերայ երկրին՝ յոր դուք անցանէք ը յորդանան ժառանգել զնա։

48 *Եւ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի ՚ի նմին աւուր՝ և ասէ։

49 ‖ Թուոց 27. 12. *‖ Ել դու ՚ի լեառն աբարիմ և ՚ի լեառն նաբաւ՝ որ է յերկրին մովաբու յանդիման երիքովի. և տես զերկիրն՝ զոր ես տաց որդւոցն իսրայելի ՚ի կալուածս։

50 *Եւ վախճանեսցիս անդէն ՚ի լերինն յոր ելանիցես. և յաւելցիս ՚ի ժողովուրդ քո՝ ‖ զորօրինակ մեռաւ ահարոն եղբայր քո ՚ի հովր լերինն. և յաւելաւ առ ժողովուրդն իւր։ ‖ Թուոց 20. 26.

51 ‖ Թուոց 20. 12. և 27. 14 *‖ Փոխանակ զի հեստեցիք բանին իմոյ ՚ի մէջ որդւոցն իսրայելի՝ ՚ի վր ջուրցն հակառակութեան ՚ի կադէս՝ յանապատին ՚ի սին. զի ոչ սրբեցիք զիս ՚ի մէջ որդւոցն իսրայելի։

52 *Յանդիման տեսցես զերկիրն՝ և անդր մի մտանիցես։

## ԳԼ: ԼԳ.

1 Այս է օրհնութիւն զոր օրհնեաց մովսէս այրն Այ զորդիսն իլի

2 յառաջ քան զվախճանելն իւր։ *Եւ ասէ. Տէր ՚ի սինայէ եկեսցէ. և երևեցաւ մեզ ՚ի սէիրայ. և փութացաւ ՚ի լեռնէն փառանու. բիւրաւորօքն ՚ի կադէսայ. յաջմէ նորա հրեշտակք

3 իւր ընդ իւր։ *Եւ խնայեաց ՚ի ժողովուրդ իւր՝ ‖ և ամենայն սրբեալք ՚ի ներքոյ ձեռին քոյ. և նոքա ընդ քև են։ ‖ Իմաս. 3. 1. և 5. 5.

4 *Եւ ընկալաւ ՚ի պատգամաց նորա օրէնս՝ զորս պատուիրեաց մեզ մովսէս զժառանգութիւն ժողովոյն յակոբայ։

5 *Եւ եղիցի իշխան ՚ի մէջ սիրեցելոյն. գումարելոց իշխանաց ժողովրդոց՝

6 հանդերձ ցեղիւքն իլի։ *Կեցցէ ռուբէն՝ և մի մեռցի. և եղիցի բազմաւոր՝ [illegible]

7 թուով։ *Եւ զայս ասէ զյուդայէ. [illegible] լուր Տր ձայնի յուդայի. և ՚ի ժողովուրդ նր եկեսցես. և ձեռք նորա ընտրեսցեն նմա. և օգնական ՚ի թշնա-

8 մեաց եղիցիս նմա։ *Եւ զղևեայ ասէ։ տուք ղևեայ զյայտնութիւն նորա. և զճշմարտութիւն նորա առն անարատի. զոր փորձեցին փորձանօք, և բամբասեցին զնա ՚ի վերայ ջրոյն հա-

9 կառակութեան։ *Որ ասէր ցհայր իւր, և ցմայր իւր՝ թէ ոչ տեսի զքեզ. և զեղբարս իւր ոչ ծանեաւ. և զորդիս իւր ոչ գիտաց. զգուշացաւ բանից

10 քոց. և զուխտ քո պահեաց։ *Պատմեսցեն զիրաւունս քո յակոբայ՝ և զօրէնս քո իլի. դիցեն խունկս ՚ի բարկութեան քում՝ համապազ ՚ի վերայ սե-

11 ղանոյ քոյ։ *Օրհնեա Տր զզօրութիւն նորա. և ընկալ զգործս ձեռաց նր. խորտակեա զմէջս ՚ի վր յարուցելոց թշնամեաց նորա. և ատելիք նորա մի

12 կանգնեսցին։ *Եւ զբենիամինէ ասէ. սիրեցեալն ՚ի Տէ բնակեսցի յուսով. և Այ հովանի լիցի նմա զամ աւուրս. և ՚ի մէջ ուսոց նորա հան-

13 գեաւ։ *Եւ զյովսեփայ ասէ. յօրհնութեան Տն երկիր նորա՝ ՚ի ժամանակաց երկնից՝ և ՚ի ցօղոյ. և յանդնդոց

14 աղբերաց ՚ի ներքուստ։ *Ի ժամանակի արդեանց՝ արեգական փոփոխմանց. և ՚ի գումարելոյ առ միմեանս

15 ամսոց։ *Ի գագաթանց լերանց սկզբանց. և ՚ի գլխոց բլրոց մշտնջե-

16 նաւորաց։ *Եւ ըստ ժամանակի երկրի լրութեան. և ընդունելութիք ‖ երևելոյն ՚ի մորենւոջն՝ եկեսցեն ՚ի վր գլխոյն յովսեփայ՝ և ՚ի վերայ գագաթան փառաւորեցելոյն ՚ի մէջ եղբարց։ ‖ Ելից. 3. 2.

17 *Անդրանիկ ցլու գեղ նորա. և եղջիւրք միեղջերուի եղջիւրք նորա. խեթկեսցէ նոքօք զազգս միանգամայն մինչև ցծագս երկրի. այս են բիւրաւորք եփրեմի. և սոքա հազա-

րաւ-

բաւորք մանասէի: 18 *Եւ զզաբուղոնէ ասէ. ուրախ լեր զաբուղոն յելս քո: և զիսաքարայ ասէ. 'ի բնակութիւնս նց, ազգք սատակեսցին: 19 *Եւ անդր կոչեսջիք. և զոհեսջիք զզոհ արդարութեն. զի զմեծութիւն ծովու դիեցուսցէ քեզ. և զշահավաճառաց առ ծովեզեր բնակելոց: 20 *Եւ զգադայ ասէ. օրհնեալ՝ որ ընդարձակեաց գադայ. հանգեաւ իբրև զառիւծ. և խորտակեաց զբազուկս. և զիշխանս: 21 *Եւ ետես զիշխանութիւն իւր. զի անդ բաժանեցաւ երկիր իշխանաց ժողովրդովք՝ հանդերձ ազգապետօք ազգաց ցեղիւքն իէլի. զարդարութիւն Տն արար՝ և զդատաստան իւր ընդ իէլի: 22 *Եւ զդանայ ասէ. դան՝ կորիւն առիւծու. և յարձակեսցի 'ի բասանայ: 23 *Եւ զնեփթաղիմայ ասէ. նեփթաղիմ, յագուրդ ընդունելութեց. և լցցի օրհնութբ 'ի Տէ. և զծով՝ և զհարաւ ժառանգեսցէ: 24 *Եւ զասերայ ասէ. օրհնեալ յորդւոց ասեր. և եղիցի ընդունելութի եղբարց. և մխեսցէ յիւղ զոտն իւր: 25 *Եւ երկաթ՝ և պղինձ եղիցին կօշիկ նորա. ըստ աւուրց քոց և զօրութի քո: 26 *Ոչ գոյ իբրև զԱծ սիրեցելոյն. որ ելանէ յերկինս օգնականն քո. և մեծամեծարարն հաստատութե: 27 *Եւ ծածկոյթ Այ իշխանութեն. և 'ի զօրութենէ բազկաց մշտնջենաւորաց՝ և մերժեսցէ յերեսաց քոց զթշնամին. և ասասցէ թէ կորիր: 28 *Եւ բնակեսցի իէլ յուսով առանձինն յերկրին յակոբայ. 'ի մէջ ցորենոյ և գինւոյ. և երկինք նմա համբարակ ցօղոյ: 29 *Երանեալ ես դու իէլ՝ ո՞ նմանեսցի քեզ ժողովուրդ ընտրեալ 'ի Տնէ. պաշտպանեսցէ քեզ օգնականն քո՝ և սուր պարծանք քո՝ և ելեսցեն թշնամիք քո. և դու ելցես 'ի վերայ պարանոցի նոցա:

Երեմ. 23. 6. և 33. 16.

## Գլ: ԼԴ.

1 Եւ ել Մովսէս յարաբովթ մովաբայ 'ի լեառն նաբաւ. 'ի կատարն փոգոլրայ՝ որ է յանդիման երիքովի. և եցոյց նմա Տր զամ երկիրն գաղաադու 2 մինչև ցդան: *Եւ զամ երկիրն նեփթաղիմայ. և զամ երկիրն եփրեմի. և մանասէի. և զամ երկիրն յուդայ 3 մինչև ցծովն վերջին: *Եւ զանապատն՝ և շուրջ զերիքովիւ. և զքաղաքն արմաւենեաց մինչև ցսեգոր: 4 *Եւ ասէ Տր ցՄովսէս. այս է երկիրն զոր երդուայ աբրահամու և իսահակայ և յակոբայ՝ և ասեմ. զաւակի քում տաց զդա. ցուցի աչաց քոց. և անդր 5 մի մտանիցես: *Եւ վախճանեցաւ Մովսէս ծառայ Այ յերկրին մովաբու՝ բանի Տն: 6 *Եւ թաղեցին զնա 'ի գայի մերձ 'ի տունն փոգորայ. և ոչ ոք գիտաց զգերեզման նորա մինչև ցայսօր: 7 *Եւ Մովսէս էր ամաց հարիւր և քսանից 'ի վախճանին իւրում. և ոչ վատեցին աչք նորա. և ոչ խորշոմեցան 8 ծնօտք նորա: *Եւ լացին որդիքն իէի զՄովսէս յարաբովթ մովաբու առ յորդանանու յանդիման երիքովի աւուրս երեսուն. և կատարեցան աւուրք սգոյ 9 լալեացն Մովսէսի: *Եւ յեսու որդի նաւեայ՝ լցաւ հոգւով իմաստութե՝ զի եդ Մովսէս զձեռն իւր 'ի վր նր. և հնազանդեցան նմա որդիքն իէի. և արարին որպէս պատուիրեաց Տր Մովսէսի: 10 *Եւ ոչ ևս եկաց մարգարէ յիէի իբրև զՄովսէս այր. զոր ծանեաւ Տէր դէմ 11 յանդիման: *Ամ նշանօք և արուեստիւք՝ զոր առաքեաց Տր առնել յերկրին եգիպտացւոց՝ 'ի փարաւոն և 'ի ծառայս նր. և յամ երկիր նր զնշանս 12 մեծամեծս: *Զձեռն հզօր. և զբազուկ բարձր՝ զոր արար Մովսէս առաջի որդւոցն իսրայելի:

Օրին. 3. 27. 2. Մակ. 2. 4.

Ծն. 12. 7. և 13. 15. և 26. 4.

Յուդ. 9.



Եւ ոտք քահանայից կրողացն տապանակին՝ մխե ցան յեզր ջրոյն յորդանանու․ Յեսուայ 3.15.



Եւ հարուրեալ զնոսա Յեսու․ եւ կախեաց զնոսա հնգեսին զփայտէ․ Յեսուայ 10.26.

# ԳԻՐՔ ՅԵՍՈՒԱՅ ՈՐԴՒՈՅ
## ՆԱՒԵԱՅ․ ՈՐ ԱՍԻ ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑ-ՒՈՑՆ ՅԷՀՕՍՈՒԱՅ․

### Գլուխ Առաջներորդ։

ԵՒ ԵՂԵՒ․ ՅԵՏ ՎԱԽ-ճանելոյն՝ մովսէսի ծառայի Տն․ խօսեցաւ Տր ը̃. յեսուայ որդւոյ նաւեայ պաշտօնէի մովսէսի՝ եւ ասէ։ 2 *Մովսէս ծառայ իմ վախճանե ցաւ․ արդ յարուցեալ անցցես ընդ այդ յորդանան՝ դու եւ ա̃մ ժողովուրդ քո՝ յերկիրն զոր ես տաց որդւոցն ի̃ղի։ 3 *Յամենայն տեղիս յոր հասանիցեն գնացք ոտից ձերոց՝ ձեզ տաց զնա՝ որ պէս խօսեցայ ընդ մովսէսի։ 4 *Զա-նապատն․ եւ զլիբանաներն․ մինչեւ ցգետն մեծ՝ ցգետն եփրատ․ զա̃մ եր կիրն քետացւոց մինչեւ ցծովն վերջին 'ի մտից արեւու՝ ձեզ լիցին սահ-մանքն։ 5 *Եւ ոչ ոք կացցէ ընդդէմ ձեր զամենայն աւուրս կենաց քոց։ Եւ որպէս էի ընդ մովսէսի՝ նոյնպէս եղէց եւ ընդ քեզ․ եւ ոչ թողից զքեզ՝ 6 եւ ոչ անտես արարից զքեզ։ *Զօրա ցիր, եւ քաջ լեր։ զի դու բաժանեսցես ժողովրդեանդ այդմիկ զերկիրն՝ զոր երդուայ հարցն քոց տալ դոցա։ 7 *Արդ զօրացիր՝ եւ քաջ լեր յոյժ․ պա հել եւ առնել ըստ ամենայն օրինացն որպէս պատուիրեաց քեզ մովսէս ծա ռայ իմ․ եւ մի խոտորեսցիս 'ի նոցանէ յաջ կամ յահեակ․ զի խելամուտ լի-ցիս ամենայնի զինչ եւ գործեսցես։ 8 *Եւ մի մերժեսցես զգիր օրինացս այ սորիկ 'ի բերանոյ քումմէ․ եւ խոկա-ցես 'ի դմա 'ի տուէ եւ 'ի գիշերի՝ զի ի-մասցիս առնել զա̃մ գրեալսդ 'ի դմա․

2. Օրէ 11. 24. Վայր․ 14.9. Վայր․ 3. 7. Եբրայ․ 13.5. 2. Օրէ 31.7. եւ 23. 3. Թագ. 2. 2.

եւ

և ապա յաջողեսցիս և ուղղեսցես զճանապարհս քո. և ապա խելամուտ լինիցիս: *Ահա պատուիրեմ քեզ. զօրացի՛ր և քաջ լե՛ր՝ մի՛ զանգիտիցես. և մի՛ երկնչիցիս՝ զի ընդ քեզ է Տր Ա.Ծ քո յամ տեղիս ուր և երթայցես : 9

*Եւ պատուիրեաց յեսու դպրաց ժողովրդեանն՝ և ասէ: մտէ՛ք ՚ի մէջ բանակի ժողովրդեանդ՝ հրաման տուէ՛ք ժողովրդեանդ. ասացէ՛ք: *Պատրաստեցէ՛ք ձեզ պաշար՝ զի այլ ևս երեք աւուրք. և անցանէ՛ք դուք ընդ այդ յորդանանաւ մտանել և ունել զերկիրն՝ զոր Տր Ա.Ծ հարցն ձերոց տացէ ձեզ ՚ի ժառանգութի: *Եւ ընդ ռուբենի՛ և ընդ գադայ՝ և ընդ կիսոյ ցեղին մանասէի խօսեցաւ՝ և ասէ: *Յիշեցէ՛ք զբանն Տն՝ զոր պատուիրեաց ձեզ մովսէս ծառայ նր՝ և ասէ. Տր Ա.Ծ ձեր զետեղեսցոյց զձեզ՝ և ետ ձեզ զերկիրս զայս: *‖Կանայք ձեր՝ և մանկունք ձեր՝ և անասունք ձեր՝ բնակեսցեն յերկրին՝ զոր ետ ձեզ մովսէս յայսկոյս յորդանանու. բայց դուք զինեալք անցանիցէք յառաջագոյն քան զեղբարս ձեր. և ամ զօրաւոր զօրութե՛ և լինիցիք նոցա մարտակիցք: *Մինչև զետեղեսցուսցէ Տէր Ա.Ծ ձեր զեղբարս ձեր՝ որպէս և զձեզդ. և ժառանգեսցեն և նոքա զերկիրն՝ զոր Տր Ա.Ծ ձեր տացէ նոցա. և դառնայցէ՛ք յիւրաքանչիւր ժառանգութիւն. և ժառանգիցէ՛ք զնա՝ զոր ետ ձեզ մովսէս ծառայ Տն յայսկոյս յորդանանու յարևելից: *Եւ պատասխանի տուեալ ասեն ցյեսու. զամ զոր մի անգամ պատուիրես մեզ՝ արասցուք : *Եւ յամ տեղիս ուր առաքիցես զմեզ՝ երթիցուք: և ըստ ամենայնի որպ լուաք մովսէսի՝ նոյնպէս և լուիցուք քեզ. բայց միայն Տէր Ա.Ծ մեր եղիցի ընդ քեզ՝ որպէս էր ընդ մովսէսի: *Եւ այր՝ որ անհնազանդ լիցի քեզ՝ և ոչ լուիցէ բանից քոց՝ որպէս ինչ հրաման տացես նմա՝ մեռցի՛ բայց միայն զօրացի՛ր և քաջ լե՛ր: 10 11 12 13 14 15 16 17 18

Թւոց 32.20.

## Գլ: Բ.

Եւ առաքեաց յեսու որդի նաւեայ ՚ի սատիմայ երկուս երիտասարդս լրտեսել զերկիրն գաղտ. և ասէ՝ ելէ՛ք լրտեսեցէ՛ք զերկիրն և զերիքով. ‖և գնացեալ երկուց երիտասարդացն՝ եկին յերիքով. և մտեալ ՚ի տուն կնոջ պոռնկի միոջ՝ որում անուն էր ռահաբ. և անդ կալան օթևանս: *Ազդ եղև թագաւորին երիքովայ. և ասեն. ահա արք մտեալ են այսր զցայգս յորդւոցն իսրայէլի՝ լրտեսել զերկիրս: *Եւ առաքեաց թագաւորն երիքովայ՝ և ասէ ցռահաբ. հան այսր զարսդ մտեալս առ քեզ՝ որք եկին ՚ի տուն քո զցայգ. զի լրտեսել զամ երկիրս եկին: *‖Եւ առեալ կինջն զերկոսին արսն՝ թագոյց զնոսա. և խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ. մտին առ իս արք. և ես ոչ գիտէի ուստի իցեն: *Եւ ընդ աղջամուղջս առաւօտուն ելին արքն արտաքս՝ և ոչ գիտեմ յո գնացին. պնդեցարուք ստէպ զհետ նոցա՝ թերևս հասանիցէք նոցա: 1 2 3 4 5

Եբր. 11.31. Յակոբ. 2.25. Վայր 6.17.

*Եւ եհան զնոսա ՚ի տանիս. և թագոյց զնոսա ՚ի խրձամբք կտաւոյ՝ զոր դիզեալ էր իւր ՚ի տանիս : *Եւ արքն տեցան արքն զկնի նց զճանապարհն յորդանանու ՚ի հունն. և դուռն փակեցաւ՝ և եղև իբրև ելին խնդրակքն զհետ նց: *Եւ մինչև ՚ի քուն մտեալ էր նոցա, ել ինքն առ նոսա ՚ի տանիսն. և ասէ ցնոսա : *Գիտեմ զի ետ ձեզ Տր զերկիրս. քանզի անկաւ ահ ձեր ՚ի վերայ մեր՝ և զի հաշեցան ամենեքեան՝ որք բնակեալք էին յերկրիս յայսմիկ յերեսաց ձերոց: *Քանզի լուաք թէ ‖ցամաքեցոյց Տր զծովն կարմիր յերեսաց ձերոց յելանելն ձեր յեգիպտոսէ. ‖և զորինչ արարէք Բ երկուս թագաւորսն ամորհացւոց. որք էին յայնկոյս յորդանանու Բ սեհոնի և Բ ովգայ՝ զորս սատակեցիք : *Եւ իբրև լուաք մեք զարհուրեցաք սրտիւք մերովք. և ոչև ս դոյ շունչ յումեք ՚ի մէնջ յերեսաց ձերոց. զի Տէր Ա.Ծ ձեր նա է Ա.Ծ յերկինս ՚ի վեր՝ և յերկիր ՚ի խոնարհ : *‖Եւ արդ՝ երդուարուք ինձ ՚ի Տր Ա.Ծ. զի առնեմ ձեզ ողորմութիւն. և արասջի՛ք դուք ողորմութի տան հօր իմոյ. և տուք ինձ զնշան ճշմարիտ : *Եւ ապրեցուցէ՛ք զտուն հօր իմոյ. և զմայր իմ, և զեղբարս իմ, և զքորս իմ. զամ որ ինչ իցէ նոցա. և փրկեսջի՛ք զանձն իմ ՚ի մահուանէ : *Եւ ասեն ցնա արքն. անձինք մեր փոխանակ ձեր ՚ի մահ. եթէ ոչ պատմիցէ՛ք զբանս զայս զմէնջ: և նա ասէ. եղիցի. յորժամ մատնեսցէ ձեզ Տր զքաղաքս. արասջի՛ք ընդ իս զողորմութի և զճշմարտութի: *Եւ կախեաց զնոսա չուանաւ ընդ պատուհանն. քանզի տուն նորա ՚ի պարսպին էր՝ և ինքն բնակեալ էր ՚ի պարսպին: *Եւ ասէ ցնոսա. զլեառն լեռնային գնասջի՛ք. զի մի՛ պատահեսցին ձեզ խնդրակքն. և թագիջի՛ք անդ զերիս աւուրս. մինչև դարձցին խնդրակքն յետոյ ձերմէ. և ապա երթիջիք 6 7 8 9 10 11 12 13 14 15 16

Ելից 14.21. Թւոց 21.24. Վայր 6.22.

ջիք զճանապարհն ձեր: 17 * Եւ ասեն արքն ցնա՝ քաւեալ եմք մեք յերդմանէդ՝ զոր երդմնեցուցեր զմեզ: 18 * Ահա մեք մտանիցեմք 'ի մասն ինչ քաղաքիդ. և դու դնիցես նշանակ զլարդ կարմիր. և կախեսցես զպատուհանէդ՝ ընդ որ զմեզ իջուցեր. և զհայր քո՝ և զմայր քո՝ և զեղբարս քո. և զամ տունն հօր քոյ ժողովեսցես առ քեզ 'ի տունս յայս: 19 * Եւ եղիցի՝ ամ որ ելանէ 'ի տանէ քումմէ արտաքս՝ ինքն եղիցի անձին իւրում պարտական. և մեք քաւեալք լիցուք յերդմանէդ քումմէ յայդմանէ: և որք միանգամ լինիցին ընդ քեզ 'ի տան քում, մեք լիցուք պարտականք՝ եթէ ձեռն ուրուք մերձեսցի 'ի նա: 20 * Ապա թէ ոք մեղանչեսցէ մեզ. և յայտնեսցես զբանս մեր զայսոսիկ, քաւեալք լիցուք յերդմանէդ քումմէ յայդմանէ: 21 * Եւ ասէ՝ եղիցի ըստ բանից ձերում. նոյնպէս եղիցի: և արձակեաց զնոսա՝ և գնացին: և կապեաց նշան կարմիր 'ի պատուհանին: 22 * Եւ գնացին՝ և եկին 'ի լեռնակողմն. և կացին անդ զերիս աւուրս. մինչև դարձան խնդրակքն: և յուզեցին խնդրակքն զամ ճանապարհն՝ և ոչ գտին: 23 * Եւ դարձան երկոքեան երիտասարդքն և իջին 'ի լեռնէ անտի. և եկին յայնկոյս: և հասին առ յեսու որդի նաւեայ. և պատմեցին զամ անցսն՝ որք անցին ընդ նս: 24 * Եւ ասեն ցյեսու, թէ մատնեաց Տէր ԱԾ 'ի ձեռս մեր զամենայն երկիրն՝ և զարհուրեցան ամ բնակիչք երկրին 'ի մէնջ:

ԳԼ. Գ:

1 Եւ կանխեաց յեսու ընդ առաւօտն. և չուեցին 'ի սատիմայ՝ և եկին մինչև ց յորդանան. ինքն և ամենայն որդիքն իէլի. և բանակեցան յառաջ քան զանցանելն: 2 * Եւ եղև յետ երից աւուրց, անցին դպիրքն ընդ բանակն: 3 * Եւ պատուիրեցին ժողովրդեանն՝ և ասեն. յորժամ տեսանիցէք զտապանակ ուխտին Տն ԱԾ ձերոյ՝ և զքահանայսն մեր, և զղևտացիսն որք բարձեալ ունիցին զնա՝ և դուք խաղասջիք 'ի տեղւոյ ձերոյ՝ և գնասջիք զհետ նր: 4 * Բայց հեռագոյն լինիցի ընդ ձեզ և ընդ նոսա՝ որչափ կանգունք երկուց հազարաց՝ զտեղի առնուցուք և ոչ մերձենայցէք 'ի նա. զի գիտիցէք զճանապարհն ընդ որ երթիցէք. զի ոչ էք երթալոց զճանապարհ երեկին և եռանդի: 5 * Եւ ասէ յեսու ցժողովուրդն. սրբեցարուք առ վաղիւ. զի վաղիւ արասցէ ձեզ Տր սքանչելիս: 6 * Եւ խօսեցաւ յեսու ընդ քահանայսն՝ և ասէ. առէք զտապանակ ուխտին Տն. և գնացէք յառաջագոյն առաջի ժողովրդեանն: և բարձին քահանայքն զտապանակ ուխտին Տն և երթային առաջի ժողովրդեանն:

7 * Եւ ասէ Տր ցյեսու. յաւուրս յայս միկ սկիզբն արարից բարձրացուցանել զքեզ առաջի ամ որդւոցն իէլի. || զի ծանիցեն թէ որպէս էի ընդ մովսէսի, նոյնպէս եղէց և ընդ քեզ: (|| Վեր. 1. 5.)

8 * Եւ արդ՝ պատուիրեա քահանայիցն՝ որք բառնան զտապանակ ուխտին՝ և ասասցես: յորժամ մտանիցէք յեզր ջրոյն յորդանանու, կացջիք 'ի ներքս 'ի յորդանան: ('ի ներս յորդանանու:) 9 * Եւ ասէ յեսու ցորդիսն իսրայէլի. մատերուք այսր՝ և լուարուք զպատգամս Տն ԱԾ մերոյ:

10 * Եւ ասէ յեսու. այնու գիտասջիք եթէ Տր կենդանի է 'ի ձեզ. և սատակելով սատակեսցէ յերեսաց ձերոց՝ զքանանացիսն. և զքետացին. և զխևացին. և զփերեզացին. և զգերգեսացին. և զամորհացին. և զյեբուսացին:

11 * || Ահաւասիկ տապանակ ուխտին Տն ամ երկրի՝ անցանէ առաջի ձեր ընդ յորդանան: (|| Գործ. 7.45.) 12 * Եւ արդ՝ յառաջ կալարուք 'ի ձէնջ արս երկոտասան յորդւոց իէլի. այր մի յիւրաքանչիւր ցեղէ: 13 * Եւ եղիցի իբրև մխեսցին ոտք քահանայիցն՝ կրելեաց զտապանակ ուխտին Տն ամ երկրի 'ի ջուրսն յորդանանու, պակասեսցի ջուրսն. և որ իջանէ 'ի վերուստ՝ կացցէ իբրև զկար կառակոյտ մի:

14 * Եւ եղև իբրև չուեաց ժողովուրդն 'ի խորանաց իւրեանց անցանել ընդ յորդանան. || և քահանայքն բարձին զտապանակ ուխտին Տն առաջի ամ ժողովրդեանն: (|| Սաղմ. 131.8.)

15 * Եւ իբրև մտանէին քահանայքն՝ որք կրէին զտապանակ ուխտին 'ի յորդանան, և ոտք քահանայիցն կրելեաց տապանակին մխեցան յեզր ջրոյն յորդանանու. և յորդանան լցեալ գայր դարիւ և դարիւ || ոպ յաւուրս հնձոց ցորենոյ: (|| Սիրաք. 24.36.) 16 * Եւ կացին ջուրքն՝ որք իջանէին 'ի վերուստ՝ միաձոյլք՝ անջրպետեալք հեռացեալք յոյժ յոյժ. յադամի տես քաղաքէ՝ մինչև 'ի մասն կարիաթարիմայ. և որք իջանէին՝ իջին 'ի ծովն արաբացւոց. 'ի ծովն աղի, մինչև իսպառ նուաղելոյ: և ժողովուրդն կայր յանդիման երիքովի: 17 * Եւ կացին քահանայքն՝ որք կրէին զտապանակ ուխտին Տն 'ի վր ցամաքի 'ի մէջ յորդանանու պատրաստութբ: և ամ որդիքն իսրայէլի անցին ընդ ցամաք:

ԳԼ: Դ.

1 Իբրեւ վախճանեաց ամենայն ժողովուրդն անցանել ընդ Յորդանան։ խօսեցաւ Տէր ընդ Յեսուայ եւ ասէ։ 2 * Առեալ քեզ 'ի ժողովրդենէ այտի արս երկոտասան. այր մի յիւրաքանչիւր ցեղէ։ 3 * Հրամա՛ն տուր նց՝ եւ ասասցես. առէք դուք ձեզ այտի 'ի միջոյ Յորդանանու յոտնատեղեաց քահանայիցդ պատրաստական քարինս երկոտասան՝ եւ տարջիք ընդ ձեզ. եւ դիջիք 'ի մէջ բանակին ձերոյ՝ ուր բանակիջիք զայս գիշեր։ 4 * Եւ կոչեաց Յեսու արս երկոտասան 'ի փառաւորաց որդւոցն իղի՝ մի յիւրաքանչիւր ցեղէ։ 5 * Եւ ասէ ցնոսա Յեսու։ մատերուք առաջի իմ յանդիման Տն 'ի մէջ Յորդանանու. եւ առեալ բարձցեն անտի իւրաքանչիւրոք քար մի 'ի վերայ ուսոց իւրեանց ըստ թուոյ ցեղիցն իսրայէլի։ 6 * Զի լինիցին նոքա ձեզ նշանակք հանապազորդ։ զի յոր ժամ հարցանիցէ ցքեզ առ վաղիւ որդին քո՝ եւ ասիցէ. զի՞նչ են քարինքս այսոքիկ ձեզ։ 7 * Պատմեսցես դու որդւոյն քում, եւ ասիցես, թէ զի պակասեցաւ գետն Յորդանան յերեսաց տապանակի ուխտի Տն ամ երկրի՝ մինչ անցանէր ընդ Յորդանան, նուազեցաւ ջուրն Յորդանանու. եւ եղիցին ձեզ քարինքս այսոքիկ 'ի յիշատակ 'ի մէջ որդւոյն իսրայէլի մինչեւ ցյաւիտեան։ 8 * Եւ արարին որդիքն իղի որպէս պատուիրեաց Տր Յեսուայ։ եւ առեալ երկոտասան քարինս 'ի միջոյ Յորդանանու որպէս հրաման ետ Տր Յեսուայ 'ի վախճանի անցանելոյ որդւոյն իղի։ եւ տարան զնս ընդ իւրեանս 'ի բանակն՝ եւ եդին զնոսա անդ։ 9 * Եւ կանգնեաց Յեսու այլեւս երկոտասան քարինս անդէն 'ի Յորդանան. 'ի տեղւոջ ուր կային ոտք քահանայիցն՝ որք կրէին զտապանակ ուխտին Տն. եւ են անդ մինչեւ ցայսօր ժամանակի։ 10 * Եւ կային անդ քահանայքն՝ որք բարձեալ ունէին զտապանակ ուխտին 'ի մէջ Յորդանանու մինչեւ վախճանեաց Յեսու զամ, զոր պատուիրեաց Տր Յեսուայ պատմել ժողովրդեանն՝ ըստ ամի զոր պատուիրեաց մովսէս Յեսուայ։ եւ փութացաւ ժողովուրդն՝ եւ էանց։ 11 * Եւ եղեւ իբրեւ վախճանեաց ամ ժողովուրդն անցանել, էանց եւ տապանակ ուխտին Տն՝ եւ երկոտասան քարինքն առաջի նց։ 12 * ‖ Անցին եւ որդիքն Ռուբենի՝ եւ որդիքն Գադայ՝ եւ կէս ցեղին Մանասէի կազմեալք առաջի որդւոցն իղի. որպէս պատուիրեաց նց մովսէս։

‖ Թուոց 32.29.

13 * Զօրք բիւրք վառեալք 'ի կռիւ, անցին առաջի Տն 'ի պատերազմ՝ երիքով քաղաքի։ 14 * Յաւուր յայնմիկ աճեցոյց Տր զՅեսու առաջի ամ ազգին իղի. եւ երկնչէին 'ի նմանէ որպէս 'ի մովսիսէ՝ որչափ ժամանակս եւ եկեաց։ 15 * Եւ խօսեցաւ Տէր 16 ընդ Յեսուայ՝ եւ ասէ։ * Հրամա՛ն տուր քահանայիցդ՝ որք բարձեալ ունին զտապանակ ուխտին վկայութե ելանել 'ի Յորդանանէ։ 17 * Եւ հրաման ետ Յեսու քահանայիցն՝ եւ ասէ. ելէ՛ք 'ի Յորդանանէ։ 18 * Եւ եղեւ, իբրեւ ելին քահանայքն՝ որք բարձեալ ունէին զտապանակ ուխտին Տն 'ի միջոյ Յորդանանու՝ եւ եդին զոտսն քահանայքն 'ի ցամաքի, դիմեաց ջուրն Յորդանանու 'ի տեղի իւր. եւ գնայր որպէս յերէկն եւ յեռանդ ընդ ամ յատակս նորա։

19 * Եւ ել ժողովուրդն 'ի Յորդանանէ 'ի տասներորդում աւուր ամսոյն առաջնոյ։ եւ բանակեցան որդիքն իղի 'ի Գաղգաղայ յարեւելից կողմանէ երիքովի։ 20 * Եւ զերկոտասան քարինսն զորս առին 'ի Յորդանանէ՝ կանգնեաց Յեսու 'ի Գաղգաղայ։ 21 * Եւ ասէ ցորդիսն իսրայէլի. յորժամ հարցանիցեն որդիքն ձեր առ վաղիւ, եւ ասասցեն. 22 զի՞նչ են քարինքս այսոքիկ։ * Պատմեսջիք որդւոց ձերոց՝ թէ ցամաքաւ 23 էանց իղ ընդ Յորդանան։ * Ի ցամաքեցուցանել Տն Այ մերոյ զջուրն Յորդանանու յերեսաց նց մինչեւ ան- 24 ցին։ * ‖ Որպէս արար Տր Ած մեր ընդ ծովն կարմիր. զոր ցամաքեցոյց Տէր 25 Ած մեր մինչեւ անցաք։ * Զի ծանիցեն ամ ազգքն՝ երկրի՝ թէ զօրութի Տն զօրաւոր է։ եւ զի դուք պաշտիցէք զՏր Ած մեր՝ զամ ժամանակս։

‖ Ելից 14.21.

ԳԼ: Ե.

1 Եւ եղեւ իբրեւ լուան ամ թագաւորքն ամօրհայեցւոց, որք էին յայն կոյս Յորդանանու առ ծովեզերբն. եւ թագաւորքն փիւնիկեցւոց՝ որք առ ծովեզերբն. եթէ ցամաքեցոյց Տէր Ած զՅորդանան գետ առաջի որդւոցն իղի յանցանելն նոցա՝ հալեցան սիրտք նց, եւ զարհուրեցան. եւ ոչ գոյր 'ի նոսա իմաստութի եւ ոչ մի յերեսաց 2 որդւոցն իսրայէլի։ * Ընդ այնու ժամանակաւ ասէ Տր ցՅեսու. արա՛ դու քեզ սուրս 'ի գայլախազ վիմէ. եւ նստեալ թլփատեսցես զորդիսն իղի 3 կրկնակի։ * Եւ արար իւր Յեսու սուրս քարեղէնս գայլախազեայս. եւ թլփատեաց զորդիսն իսրայէլի 'ի տեղւոջն՝

որ

որ կոչիւր բլուր անթլփատից ։ *Եւ 4
զորօրինակ յապաւեաց յեսու զոր-
դիսն իսրայէլի որք էին 'ի Ճանապար-
հի անդ․ որք բնաւ չէին թլփատեալք
յելելոցն յեգիպտոսէ․ զամենեսեան
թլփատեաց յեսու ։)Եւ այս ժողովուրդ
է՝ զոր թլփատեաց յեսու ։ ամ ժողո
վրդեանն ելելոց յեգիպտոսէ զարու
մանուկ ։ քանզի ամ արք պատերազ-
մօղք մեռան յանապատին անդէն 'ի
Ճանապարհին , յելանելն իւրեանց
յերկրէն եգիպտացւոց ։* Զի թլփա 5
տեալք էին ամ ժողովուրդն՝ որք ե-
լին․ և ամ ժողովուրդն՝ որք ծնան յա
նապատին 'ի Ճանապարհին ելանելոյ
նց յերկրէն եգիպտացւոց , ոչ թլփա
տեցան ։ * Քանզի զքառասուն և 6
զերկուս ամս շրջեցաւ իէլ յանապա-
տին աբդարեայ․ վասնորոյ անթլ-
փատք էին բազումք 'ի պատերազմո-
ղացն՝ ելելոց յերկրէն եգիպտաց-
ւոց՝ որք անհնազանդեցան պատուի-
րանացն այ ։ որոց և սահմանեաց Տր
չտեսանել զերկիրն՝ զոր երդուաւ
հարցն նց տալ նց․ զերկիր՝ որ բղխէ
զկաթն և զմեղր ։ * Եւ փոխանակ նց 7
տարաւ զորդիս նց՝ զորս թլփատեաց
յեսու՝ քանզի անթլփատք էին ։ վն
լինելոյ նոցա անթլփատս 'ի Ճանա-
պարհին ։ * Եւ իբրև թլփատեցաւ 8
ամ ազգն․ հանդարտութի կալեալ
նստան անդէն 'ի բանակին, մինչև ող-
ջացան ։* Եւ ասէ Տր ցյեսու ․ յաւուր 9
յայսմիկ բարձի զնախատինս եգիպ-
տացւոց 'ի ձէնջ ։ և կոչեաց զանուն
տեղւոյն այնորիկ գաղգաղայ մինչև
ցայսօր ։ * Եւ անդ բանակեցան որ- 10
դիքն իէի ․ և արարին որդիքն իէի
զզատիկն 'ի չորեքտասաներորդում
աւուր ամսոյն յերեկորեայ ։ յարևելից
երիքովի 'ի դաշտի անդ ։ * Եւ կերին 11
'ի ցորենոյ երկրի զայգոյ բաղարջ և
նորի ։ * Յաւուր յայնմիկ պակասե- 12
ցաւ մանանայն , յետ ուտելոյ նց 'ի
ցորենոյ երկրին ․ և ոչ ևս գտանիւր
որդւոցն իսրայէլի մանանայ ․ և ժողո
վեցին զպտուղ երկրին փիւնիկեցւոց
'ի տարւոջն յայնմիկ ։ * Եւ եղև մինչ 13
էր յեսու յերիքով , ամբարձեալ զաչս
իւր ետես ․ զի կայր առաջի նորա այր․
և սուսեր մերկ 'ի ձեռին նորա ։ և մա
տուցեալ յեսուայ՝ ասէ ցնա ․ մեր ես
թէ 'ի թշնամեաց մերոց ։ * Եւ նա 14
ասէ ցնա ․ ես զօրավար եմ զօրու Տն ․
և այժմ եկի ։ * Եւ անկաւ յեսու 'ի 15
վր երեսաց իւրոց՝ և երկիրպագ ․ և
ասէ ցնա ․ Տր՝ զինչ հրաման տացես
ծառայի քում ։ * Եւ ասէ զօրավարն 16
Տն ցյեսու ․ Լոյծ զկօշիկս քո յոտից
քոց ․ զի տեղիդ յորում կաս՝ սբ է ։
և արար այնպէս ։

Ղ 40. ամս
Մինչև սպառե-
ցաւ ամ
այլ ազգ պա-
տերազմո-
ղաց

Ելից. 3. 5.
Գործ. 7. 33.

## ԳԼ. Զ.

1 Եւ երիքով փակեալ և ամրացեալ
էր յերեսաց որդւոցն իսրայէլի ․
և ոչ ոք ելանէր 'ի նմանէ ․ և ոչ ոք մտա
2 նէր ։ * Եւ ասէ Տր ցյեսու ․ ահա ես
տամ 'ի ձեռս քո զերիքով՝ և զթա-
գաւորն որ 'ի նմա ․ և զզօրաւորս զօ-
3 րութե ։ * Բայց դու՝ ած և պատեա
զնովաւ զամ մարտիկս շուրջանակի
յոբելինաւն ․ 'ի լսել ձեզ զձայն եղ
ջեր փողոյ ։ և եղիցի՝ իբրև հարկանի
ցէք զփողն՝ պատեսջիք զքաղաքն ամ,
արք պատերազմօղք շուրջ զքաղա-
քաւն մի անգամ ։ այսպէս առնիցէք
4 զվեց օր ։ * Եւ եօթն քահանայք առ-
ցեն զեօթն փողսն եղջերեայս յոբե-
լեան առաջի տապանակին ։ և յաւուրն
եօթներորդի պատեսջիք զքաղաքն
եօթնանգամ ․ և քահանայքն հարցեն
5 զփողսն եղջերեայս ։ * Եւ աղաղա-
կեսցեն առհասարակ ամ ժողովուրդն ․
և յաղաղակելն նց կործանեսցին ինք
նին պարիսպք քաղաքին՝ 'ի ներքոյ նո
ցա ․ և մտցէ ամ ժողովուրդն դիմեալ
իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւր-
6 ոց ։ * Եւ եմուտ յեսու որդի նաւեայ
առ քահանայսն և ասէ ցնս ․ առէք
զտապանակ ուխտին՝ և եօթն քահա-
նայք առցեն եօթն փողս եղջերեայս
յոբելեան առաջի տապանակին Տն ։
7 * Եւ խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ ․
պատուէր տուք ժողովրդեանն անցա
նել և պատել զքաղաքն․ և մարտիկքն
երթիցեն վառեալք առաջի տապա-
8 նակին Տն ։ * Եւ եղև իբրև պատուի
րեաց ժողովրդեանն ․ և եօթանեքին
քահանայքն՝ որք ունիցին եօթն փողս
նուիրականս , անցցեն նոյնպէս առա
ջի Տն և ազդեսցեն յուժգին ․ և տա-
պանակ ուխտին Տն երթիցէ զհետ
9 նց ։ * Եւ մարտիկքն երթիցեն առա
ջի ․ և քահանայքն , որք հարկանիցեն
զփողսն եղջերեայս՝ և վերջապահքն
զկնի տապանակին Տն ․ հարկանելով
10 զփողսն եղջերեայս երթիցեն ։ * Եւ
ժողովրդեանն պատուէր ետ յեսու՝
և ասէ ․ մի աղաղակիցէք ․ և մի ոք լուի
ցէ զբարբառ ձեր ․ և մի ելանիցէ բան
'ի բերանոյ ձերմէ , մինչև յօրն յորում
ինքն ազդ արասցէ աղաղակելոյ՝ և
11 ապա աղաղակեսջիք ։ * Եւ շուրջ ե-
կեալ տապանակի ուխտին Տն զքա-
ղաքաւն , դնաց անդրէն 'ի բանակն
12 և անդ ագաւ ։ * Եւ յաւուրն երկրորդ

ղի յարեաւ յեսու ընդ առաւօտն. և
բարձին քահանայքն զտապանակն Տն։
*Եւ եօթն քահանայքն առին եօթն 13
փողս նուիրականս և երթային առա
ջի Տն. և քահանայքն հարին զփողսն.
(և այլեւս ամենայն ամ. և գնացին
դարձեալ անդրէն 'ի բանակն։) և
ապա մտանէին մարտիկքն. և այլեւս
ամենայն զկնի տապանակի ուխտին
Տն։ և երթային՝ և հարկանէին ըզ
փողսն եղջերեայս։ *Եւ պատեցին 14
զքաղաքն յաւուրն երկրորդի միան
գամ 'ի մօտոյ. և գնացին դարձեալ
անդրէն 'ի բանակն. այնպէս արարին
զվեց օր։ *Եւ եղև յաւուրն եօթն 15
երորդի, յարեան ընդ ելս առաւօտուն.
և պատեցին զքաղաքն ըստ նմին օրի
նակի եօթն անգամ։ *Եւ եղև յեօթն 16
երորդում նուագի պատելոյն, հա
րին քահանայքն զփողսն. և ասէ յեսու
ցորդիսն իղի. արդ աղաղակեցէք.
քանզի մատնեաց Տէր 'ի ձեռս մեր
զքաղաքս։ *Եւ եղիցի քաղաքն նզո 17
վեալ. ինքն, և ամ որինչ 'ի նմա իցէ
'ի Տէ զօրութեանց։ ‖ բայց զռահաբ
պոռնիկ ապրեցուցջիք. զնա և զամ
ինչ՝ որ իցէ 'ի տան նորա. զի թաքոյց
զհրեշտակսն՝ զորս արձակեցաք։

‖ Մկր. 2. 4. Եբրայ. 11. 31.

*Բայց դուք զգոյշ լինիջիք 'ի նզո 18
վիցն. գուցէ ցանկացեալք առնու
ցուք ինչ դուք 'ի նզովից անտի. և առ
նիցէք զբանակ որդւոցն իսրայելի 'ի
նզովս. և ընջիցէք զմեզ։ *Բայց ամենայն 19
ոսկի՝ և արծաթ՝ և պղինձ՝ և երկաթ
եղիցի նր Տն. 'ի գանձ Տն մտցէ։
*Եւ աղաղակեաց ժողովուրդն. և 20
հարին քահանայքն զփողսն. իբրև
լուաւ ժողովուրդն զձայն փողոյն՝ ‖ ա
ղաղակեաց ամ ժողովուրդն առ հա
սարակ մեծ և ուժգին աղաղակաւ.
և անկաւ պարիսպն շուրջանակի. և
ել ամ ժողովուրդն 'ի քաղաքն իւրա
քանչիւր հանդէպ իւր. ‖ և առին զքա
ղաքն։ *Եւ նզովեցին զնա. և որինչ 21
էր 'ի քաղաքին՝ յառնէ մինչև ցկին. և
յերիտասարդէ մինչև ցծեր. և յար
ջառոյ մինչև ցոչխար, և ցէշ, արկին
'ի բերան սրոյ։ *Եւ ցերկուս երի 22
տասարդսն ‖ որք լրտեսեցին զերկիրն՝
ասէ յեսու. մտէք 'ի տուն կնոջն պոռն
կի. և հանէք զնա անտի. և զամ ինչ
որ նորա իցէ՝ որպէս երդուայք նմա։
*‖ Եւ մտին երկու երիտասարդքն՝ 23
որոց լրտեսեալ էր զքաղաքն՝ 'ի տուն
կնոջն. և հանին զռահաբ պոռնիկ.
և զհայր նորա՝ և զմայր նորա. և զեղ
բարս նորա. և զամ որինչ էր նորա.
և զամ ազգատոհմն նորա. և կացու

‖ Եբրայ. 11. 30.
‖ 2. Մակ. 12. 15.
‖ Մկր. 2. 1. և 14.
‖ Եբրայ. 11. 31.

ցին զնա արտաքոյ բանակին իսրայե
24 լի։ *‖ Եւ զքաղաքն այրեցաւ հրով. և զամ ինչ որ 'ի նմա էր. բայց յոսկւոյ
և յարծաթոյ՝ և պղնձոյ՝ և յերկաթոյ՝
զորս ետուն 'ի գանձ Տն մուծանել։
25 *Եւ զռահաբ պոռնիկ. և զտուն նր
հայրենի. և զամ ինչ՝ որ նորա էր՝
ապրեցոյց յեսու. և բնակեցաւ 'ի մէջ
իղի մինչև ցայսօր ժամանակի. վն զի
թաքոյց զլրտեսսն՝ զորս առաքեաց
յեսու յաւուր յայնմիկ լրտեսել զե
26 րիքով։ *Եւ նզովեաց յեսու յաւուր
յայնմիկ զերիքով՝ և ասէ. ‖ անիծեալ
լիցի մարդն առաջի Տն, որ կանգնես
ցէ՝ և շինեսցէ զքաղաքն զերիքով.
անդրանկաւ իւրով դնել զհիմունս
նորա. և կրտսերաւ իւրով կանգնեսցէ
զդրունս պարսպի նր. (և այնպէս արար
ազան բեթելացի, աբիրոնաւ անդ
րանկաւ իւրով եդ զհիմունս նորա. և
զերծելով կրտսերաւ իւրով կանգնեաց
27 զդրունս նր։) *Եւ էր Տէր ընդ յե
սուայ. և էր անուն նր ընդ ամ երկիր։

‖ Մակ. 8. 2.
‖ 3 Թագ. 16. 34.

## Գլ: Է։

1 Եւ ‖ յանցեան որդիքն իսրայելի
յանցանս. և գողացան 'ի նզովից
անտի։ ‖ և էառ աքար որդի քարմեայ.
որդւոյ զամբրեայ. որդւոյ զարայի 'ի
ցեղէ յուդայ՝ 'ի նզովից անտի. և
բարկացաւ սրտմտութբ Տր որդւոցն
2 իղի։ *Եւ առաքեաց յեսու արս յերի
քովէ 'ի գայի՝ որ է յանդիման բեթէ
լայ՝ և ասէ ցնոսա. լրտեսեցէք զգայի.
և ելին արքն՝ և լրտեսեցին զգայի։
3 *Եւ դարձան առ յեսու՝ և ասեն. մի
ելցէ ամ ժողովուրդս. այլ իբրև եր
կու հազարք՝ կամ երեքհազարք ա
րանց ելցեն. և պաշարեսցեն զքաղաքն.
մի տանիր անդ զամ ժողովուրդն՝ զի
4 սակաւք են։ *Եւ ելին անդր 'ի ժողո
վրդենէն իբրև երեքհազարք. և փա
խեան յերեսաց արանցն գայեայ։
5 *Եւ կոտորեցին 'ի նոցանէ արք գայ
եայ՝ արս երեսուն և վեց. և հալածե
ցին զնս 'ի դրանէն մինչև խորտակե
ցին զնս. և վիրաւորեցին 'ի զառիվայ
րին. և պակասեցաւ սիրտ ժողովր
6 դեանն՝ և եղեն իբրև զջուր։ *Եւ
պատառեաց յեսու զհանդերձս իւր.
և անկաւ 'ի վր երեսաց իւրոց յերկիր
առաջի տապանակին Տն մինչև ցերե
կոյ. ինքն և ծերքն իղի. և արկին հող
7 զգլխովք իւրեանց։ *Եւ ասէ յեսու.
աղաչեմ զքեզ Տր Տր. ընդէր իսկ
բնաւ անցոյց ծառայքո զժողովդս
զայս ընդ յորդանան. մատնել զսոսա
ամորհացւոցն՝ և կորուսանել զմեզ։

‖ Մակ. 22. 20.
‖ 1. Մն. 2. 7.

լաւ

լաւ էր՝ եթէ անդէն զետեղեալ և բնակեալ էաք առ եզերբ յորդանանու։

8 *Յիս Տէր. և արդ զինչ արարից՝ որովհետև կորացոյց Իսրայէլ զպարանոց իւր առաջի թշնամեաց իւրոց։

9 *Եւ լուեալ քանանացւոցն՝ և ամ բնակչաց երկրին պատեսցեն զմեզ՝ և սատակեսցեն յերկրէ. և զինչ արասցես զանուն քո մեծ։

10 *Եւ ասէ Տէր ցյեսու. յոտն կաց. զի՞ անկեալ կաս 'ի վերայ երեսաց քոց։

11 *Մեղաւ ժողովուրդն՝ և եանց զուխտիւ իմով զոր ուխտեցի նոցա. և գողացան՝ և առին 'ի նզովիցն. ստեցին՝ և արկին յամանս իւրեանց։

12 *Եւ ոչ ևս կարիցեն որդիքն Իէլի կալ առաջի թշնամեաց իւրեանց. այլ դարձուսցեն զպարանոցս առաջի թշնամեաց իւրեանց՝ զի եղեն 'ի նզովս. և ոչ ևս յաւելից լինել ընդ ձեզ. եթէ ոչ բառնայցէք զնզովսդ զայդ 'ի միջոյ ձերմէ։

13 *Արի՛ սրբեա զժողովուրդդ. և արասցես սրբել առ վաղիւ. այսպէս ասէ Տր Ած Իէլի. նզովք են 'ի ձեզ Իէլ. ոչ կարիցէք կալ առաջի թշնամեաց ձերոց՝ մինչև բառնայցէք զնզովսն 'ի ձէնջ։

14 *Եւ ժողովեսջիք ամենեքեան ընդ առաւօտն ըստ ցեղից ձերոց. և եղիցի ցեղն՝ զոր ցուցցէ Տր՝ մատուսջիք ըստ տոհմից. և զտոհմն զոր յանդիմանեսցէ Տր, մատուսջիք ըստ տանց՝ և տունն զոր յանդիմանեսցէ Տր՝ մատուսջիք ըստ արանց։

15 *Եւ որ յանդիմանեսցի 'ի նզովսն, այրեսցի ինքն հրով. և ամենայն ինչ որ նր իցէ. զի եանց զուխտիւն Տն և արար անօրէնութին 'ի մէջ Իէլի։

16 *Եւ կանխեաց յեսու ընդ առաւօտն. և մատոյց զժողովուրդն ըստ ցեղիցն իւրեանց. և յանդիմանեցաւ ցեղն յուդայի։

17 *Եւ մատուցաւ ցեղն յուդայի ըստ տոհմից, և յանդիմանեցաւ տոհմն զարայի. և մատուցաւ տոհմն զարայի ըստ արանց, և յանդիմանեցաւ զամբրի։

18 *Եւ մատուցաւ տունն նորա ըստ արանց, և յանդիմանեցաւ աքար որդի քարմեայ. որդւոյ զամբրեայ. որդւոյ զարայի 'ի ցեղէն յուդայ։

19 *Եւ ասէ յեսու ցաքար. որդեա՛կ իմ. տո՛ւր փառս այսօր Տն Ած Իէլի. և տո՛ւր խոստովանութի. և պատմեա՛ ինձ զինչ գործեցեր. և մի՛ թագուցաներ յինէն։

20 *Պատասխանի ետ աքար՝ և ասէ ցյեսու. արդարև ես մեղայ առաջի Տն Ած Իէլի. զայս ինչ և զայս գործեցի։

21 *Տեսի յաւարին ամղան մի նկարէն գեղեցիկ. և երկերիւր երկդրամեան արծաթոյ. և լեզու մի ոսկի՝ որոյ յիսուն երկդրամեան էր ձոյլ նորա. և ցանկացեալ նոցա առի. և ահաւասիկ թաղուցեալ կայ ընդ հողով 'ի վրանի իմում. և արծաթն թագուցեալ կայ 'ի ներքոյ նց։

Ա Նաւ. 20.7. Թուոց 11.18. Ա Թգ. 3.5. 1. Թագ 16.5.

22 *Եւ առաքեաց յեսու հրեշտակս արս՝ և ընթացան 'ի վրանն 'ի բանակն. և անդ թագուցեալ կայր 'ի վրանի նորա. և արծաթն 'ի ներքոյ նոցա։

23 *Հանին զայն 'ի վրանէ անտի՝ և բերին առ յեսու՝ և առ ծերսն Իէլի. և եդին առաջի Տն։

24 *Եւ էառ յեսու զաքար զորդի զարայի. և եհան զնա 'ի ձորն աքովրայ. և զուստերս նր և զդստերս նորա. և զարջառ նորա. և զէշ նորա. և զամենայն զոչխարս նր. և զվրանս նորա. և զամենայն ինչս նր. և ամենայն Իէլ ընդ նմա. և եհան զնս յեմակն աքովրայ։

25 *Եւ ասէ յեսու ընդէ՞ր սատակեցեր զմեզ. սատակեսցէ զքեզ Տր ըստ աւուրս ըստ այսմիկ. և քարկոծեցին զնա ամ Իէլ քարամբք. և այրեցին զնոսա հրով. և քարկոծեցին զնոսա քարամբք։



26 *Եւ կուտեցին 'ի վերայ նր կարկառ մեծ քարանց մինչև ցայսօր. և դադարեաց Տր 'ի սրտմտութենէ բարկութեն իւրոյ. վասն այնորիկ անուանեաց զնա եմակ աքովրայ մինչև ցայսօր։

## ԳԼ. Ը.

1 Եւ ասէ Տր ցյեսու. մի՛ երկնչիր՝ և մի՛ զանգիտեսցես. առ դու ընդ քեզ

քեզ զամենայն արս պատերազմողս. եւ յարուցեալ ելցես 'ի գայի. ահա ես տամ 'ի ձեռս քո զթագաւորն գայեայ՝ եւ զժողովուրդ նր. եւ զքաղաք նորա՝ եւ զերկիր նորա: 2 *Եւ արասցես ընդ գայի եւ ընդ թագաւորն նորա. Զոր օրինակ արարեր ընդ երիքով եւ ընդ թագաւորն նորա. եւ զաւար նորա՝ եւ զանասուն նորա ածցես յաւարի. եւ կացուցես քեզ դարանամուտս քաղաքին զկնի նորա: 3 *Եւ յարեաւ յեսու՝ եւ ամ ժողովուրդն պատերազմող, ելանել 'ի գայի. եւ ընտրեաց յեսու երեսուն հազարս արանց զօրաւորս զօրութբ. եւ առաքեաց զնոսա գիշեր: 4 *Եւ պատուիրեաց նոցա՝ եւ ասէ. տեսէք. զի դուք դարանամուտ լինիք յետուստ քաղաքին. եւ մի կարի հեռի լինիջիք 'ի քաղաքէն. եւ կայջիք պատրաստք ամենեքին: 5 *Եւ ես՝ եւ ամ ժողովուրդն՝ որ ընդ իս՝ մօտեսցուք 'ի քաղաքն. եւ եղիցի յորժամ ելանիցեն բնակիչքն գայեայ ընդդէմ մեր իբրեւ զառաջինն՝ փախիցուք յերեսաց նոցա: 6 *Եւ իբրեւ ելցեն զկնի մեր. Մեկնեսցուք զնոսա 'ի քաղաքէ անտի. եւ ասիցեն՝ թէ փախեան յերեսաց մերոց իբրեւ զառաջինն: 7 *Եւ իբրեւ փախիցուք յերեսաց նց՝ դուք յարիջիք 'ի դարանէ անտի. եւ մտջիք 'ի քաղաքն՝ եւ հարջիք զքաղաքն. եւ տացէ զնոսա Տր Ած խորայիլի 'ի ձեռս մեր: 8 *Եւ եղիցի յորժամ առնուցուք զքաղաքն՝ այրեսջիք զնա հրով. ըստ այսմ օրինակի առնիջիք՝ ահա պատուիրեցի ձեզ: 9 *Եւ առաքեաց զնս յեսու՝ եւ գնացին 'ի դարանն. եւ մտին՝ զօղեցին 'ի մէջ բեթելայ եւ 'ի մէջ գայեայ. 'ի ծովակողմանէն գայեայ. եւ ագաւ յեսու զայն գիշեր 'ի մէջ ժողովրդեանն: 10 *Եւ կանխեալ յեսու ընդ առաւօտն արար հանդէս ժողովրդեանն. եւ ել ինքն, եւ ծերքն իլի առաջի ժողովրդեանն 'ի վր գայեայ: 11 *Եւ ամենայն զօր պատերազմող ելին ընդ նոսա՝ եւ գնացին. ելին եւ եկին հանդէպ քաղաքին յարեւելից կողմանէ՝ եւ դարանամուտք քաղաքին 'ի ծովակոյս կողմանէ. եւ բանակեցան 'ի հիւսիսոյ գայեայ: 12 *Եւ էառ հինգ հազար արանց. եւ եմուծ զնոսա 'ի դարան՝ ընդ բեթօն եւ ը ծովն գայեայ: 13 *Եւ եհարկ զժողովուրդն եւ զամ բանակն հիւսիսոյ քաղաքին. եւ էանց յեսու զգիշերն զայն ընդ մէջ ձորոյն: 14 *Եւ եղեւ իբրեւ ետես թագաւորն գայեայ. փութացաւ՝ կանխեաց՝ եւ ել ը դէմ նց. եւ արք քաղաքին երթային հանդէպ նոցա 'ի պատերազմ. ինքն եւ ամենայն ժողովուրդ իւր 'ի ժամանակին յանդիման արաբիայ. եւ ինքն ոչ գիտէր եթէ դարան գործեալ իցէ նմա յետուստ քաղաքին: 15 *Իբրեւ ետես յեսու՝ դարձաւ անդրէն ընդ կրունկն՝ եւ ամ իէլ՝ յերեսաց նոցա փախեան ընդ ճանապարհ անապատին: 16 *Եւ ստիպեաց ամ ժողովուրդ երկրին երթալ զհետ նց. եւ պնդեցան երթալ զկնի որդւոցն իսրայէլի. եւ նոքա մեկնեցան 'ի քաղաքէ անտի: 17 *Եւ ոչ մնաց 'ի գայի՝ եւ 'ի բեթէլ՝ որ ոչ պնդեցաւ զհետ իէլի. եւ թողին զքաղաքն 'ի բաց. եւ յարձակեցան զհետ իէլի: 18 *Եւ ասէ Տր ցյեսու. ձգեա՛ զձեռն քո գայխոնաւդ՝ որ 'ի ձեռին քում 'ի վերայ քաղաքին. զի 'ի ձեռս քո մատնեցի զնա. ( եւ դարանակալքն ելցեն վաղվաղակի 'ի տեղւոջէ իւրեանց. ) եւ ձգեաց յեսու ըզ գայխոնն, եւ զձեռն իւր 'ի վերայ քաղաքին: 19 *Եւ դարանակալքն յարեան վաղվաղակի 'ի տեղւոջէ իւրեանց՝ եւ ելին. իբրեւ ձգեաց զձեռն, մտին 'ի քաղաքն՝ եւ առին զնա. եւ փութացեալ այրեցին զքաղաքն հրով: 20 *Եւ հայեցեալ բնակչացն գայեայ 'ի թիկունս իւրեանց, տեսանէին զի ելանէր ծուխ քաղաքին մինչեւ յերկինս՝ եւ ոչ եւս ուրեք գոյր նոցա փախուստ այսր կամ անդր. եւ ժողովուրդն՝ որ թագուցեալ էր յանապատին՝ յարեան 'ի վերայ հետամտացն: 21 *Եւ յեսու՝ եւ ամ ժողովուրդն իբրեւ տեսին՝ թէ առին դարանակալքն զքաղաքն. եւ զի ելանէր ծուխ քաղաքին մինչեւ յերկինս. դարձան անդրէն ընդ կրունկն՝ եւ հարին զարսն գայեայ: 22 *Եւ նոքա ելին 'ի քաղաքէ անտի ընդ առաջ նց. եւ եղեն 'ի մէջ բանակին՝ նոքա անտի, եւ սոքա աստի՝ հարին զնոսա մինչեւ չմնալոյ 'ի նոցանէ ապրեալ, եւ փախստական: 23 *Եւ զթագաւորն գայեայ ձեռբակալ արարին կենդանւոյն. եւ ածին առ յեսու: 24 *Եւ իբրեւ դադարեցին որդիքն իէլի 'ի կոտորելոյ զամ գայացիս. զորս 'ի դաշտս. զորս 'ի լերինս զառիվայրին մինչ ուր հալածեցին զնս. եւ անկան ամենեքին 'ի սուր սուսերի մինչեւ իսպառ. եւ դարձաւ յեսու 'ի գայի. եւ եհար զնա սրով սուսերի: 25 *Եւ եղեն անկեալք յաւուր յայնմիկ յառնէ մինչեւ ցկին՝ երկոտասան հազար. ամենայն բնակիչքն գայեայ: 26 *Եւ յեսու ոչ դարձոյց զձեռն իւր՝ զոր ձգեաց գայխոնաւն, մինչեւ նզովեաց զամ բնակիչսն գայացւոց:

*Եւ այ

27 *Բաց յանասնոց և յաւարէ քաղաքին՝ զոր աւարեցին որդիքն Իղի ըստ հրամանի Տն՝ որպէս հրամայեաց Տր յեսուայ։ 28 *Եւ այրեաց յեսու զքաղաքն հրով՝ և արար զնա բլուր հողոյ անշէն յաւիտեան մինչև ցայսօր։ 29 *Եւ զթագաւորն գայեայ կախեաց զերկփեղ փայտէ. և էր 'ի վերայ փայտին կախեալ մինչև ցերեկոյ. և ընդ մտանել արեգականն հրամայեաց յեսու՝ և իջուցին զնա 'ի փայտէ անտի. և ընկեցին զնա 'ի գուբ առ դրան քաղաքին. և կուտեցին 'ի վերայ նորա կարկառ քարանց մինչև ցայսօր։ 30 *Յայն ժամ շինեաց յեսու սեղան Տն Այ Իղի 'ի լերինն գեբաղ։ 31 *Որպէս պատուիրեաց մովսէս ծառայ Տն որդւոցն Իղի՝ զորօրինակ գրեալ է յօրէնսն մովսէսի. || սեղան յողջոց քարանց՝ յորս ոչ մերձեցեալ իցէ երկաթ. և եհան ողջակէզ Տն և զոհ փրկութե։ 32 *Եւ գրեաց յեսու 'ի վերայ քարանցն զերկրորդումն օրինացն զօրէնսն մովսէսի՝ զոր գրեաց առաջի որդւոցն իսրայէլի։ 33 *Եւ ամենայն Իղ՝ և ծերք նոցա՝ և դատաւորք նոցա՝ և դպիրք նոցա՝ էր թային աստի և անտի հանդէպ տապանակին. և քահանայքն ղևտացիք բարձին զտապանակ ուխտին Տն. և եկն՝ և բնակ. և էին կէսք 'ի նոցանէ մերձ 'ի լեառն գարիզին. կէսք 'ի նոցանէ մերձ 'ի լեառն գեբաղ. որպէս պատուիրեաց մովսէս ծառայ Տն օրհնել նախ զժողովուրդն։ 34 *Եւ ապա ընթերցաւ զամ բանս օրինացս այսոցիկ. զօրհնութիւս և զանէծս. ըստ ամ գրելոցն յօրէնսն մովսէսի։ 35 *Եւ ոչ էր բան յամենայնէ՝ զոր պատուիրեաց մովսէս յեսուայ՝ զոր ոչ ընթերցաւ յեսու յականջս ամենայն եկեղեցւոյն իսրայէլի, արանց՝ և կանանց՝ և մանկանց. և եկացն յեցելոց յիէլ։

|| Ելից. 20.25. 2. Օրէ. 27.5.

## Գլ: Թ.

1 Երբև լուան ամ թագաւորքն ամօրհացւոց՝ որք յայնկոյս յորդանանու որք լեռնայինք՝ և որք դաշտայինք. և որք յամ ծովեզերս ծովուն մեծի. և որք առ լիբանաներբն. քետացիքն՝ և ամօրհացիք. և գերգեսացիք՝ և քանանացիք. և փերեզացիք. և խևացիք և յեբուսացիք։ 2 *Եկին 'ի միասին՝ տալ պատերազմ ընդ յեսուայ՝ և ընդ Իղի առհասարակ։ 3 *Եւ բնակիչքն գաբաւոնի լուան՝ զորինչ արար յեսու ընդ երիքով՝ և ընդ գայի։ 4 *Արարին և նոքա խորամանկութբ՝ եկեալք պաշարովք և պատրաստութբ. առին քուրձս հնացեալս 'ի վերայ ուսոց իւրեանց. և տիկս գինւոյ հնացեալս և պատառոտունս և կարկատեալս։

5 *Եւ անկարուրդք կօշկաց նոցա՝ և հողաթափք իւրեանց հնացեալք և կարկատեալք յոտս իւրեանց. և հան դերձք իւրեանց հնացեալք զանձամբք իւրեանց. և հաց հնացեալ չորացեալ և ճռճեկեր։ 6 *Եւ եկին առ յեսու 'ի բանակն իսրայէլի 'ի գաղգաղայ։ և ասեն ցյեսու և ցամենայն Իղ. յերկրէ հեռաստանէ եկեալ եմք. և արդ դիր ընդ մեզ ուխտ. և ասեն որդիքն իսրայէլի ցքոռացին։ 7 *Տես՝ գուցէ առ իս բնակեալ իցես. և զիա՞րդ դնեմք ընդ քեզ ուխտ։ 8 *Եւ ասեն ցյեսու. ծառայք քո եմք. և ասէ ցնոսա յեսու ուստի՞ էք դուք. և ուստի՞ եկեալ էք։ 9 *Եւ ասեն ցնա. յերկրէ հեռաստանէ յոյժ՝ եկին ծառայք քո՝ յանուն Տն Այ քոյ. զի լուաք զանուն նորա. և զորինչ արար ընդ եգիպտոս։ 10 *Եւ զորինչ արար ընդ || երկուս թագաւորսն ամօրհացւոց՝ որք էին յայնկոյս յորդանանու. ընդ սեհոն թագաւորն եսեբոնի. և ընդ ովգ թագաւորն բասանու՝ որ բնակեալ էր յաստարովթ և յեդրային։ 11 *Եւ խօսեցան ընդ մեզ ծերքն մեր, և ամենայն բնակիչք երկրին մերոյ՝ և ասեն. առէք ձեզ պաշար ճանապարհի՝ և երթայք ընդ առաջ նոցա. և ասասջիք ցնոսա՝ ծառայք ձեր եմք. և արդ դիք ընդ մեզ ուխտ։ 12 *Օ՛ն զհացս զայս մեր ջերմ առաք պաշար 'ի տանց մերոց՝ յաւուր յորում ելաք 'ի տանց մերոց և եկաք առ ձեզ. և արդ չորացաւ՝ և եղև ճռճեկեր։ 13 *Եւ տիկքս՝ զորս լցաք գինւով՝ նորք էին՝ և պատառեցան. և ձորձք մեր՝ և կօշիկք մաշեցան 'ի բազում երկայն ճանապարհէն։ 14 *Եւ առին իշխանքն զպաշար նոցա՝ և զՏր ոչ հարցին։ 15 *|| Եւ արար ընդ նս ուխտ խաղաղութե յեսու. և ուխտեաց նոցա ապրեցուցանել զնոսա. և երդուան նոցա իշխանք ժողովրդեանն։ 16 *Եւ եղև յետ երից աւուրց՝ զհետ ուխտելոյ նոցա զուխտն, լուան եթէ մօտաւորք են. և անդէն առ նոսա բնակին։ 17 *Չուեցին որդիքն իսրայէլի՝ և եկին 'ի քաղաքս նոցա յաւուրն երրորդի. և քաղաքք նց էին գաբաւոն՝ և կեփիրոն՝ բերովթ. և քաղաքք յարիմայ։ 18 *Եւ ոչ մարտեան ընդ նոսա որդիքն իսրայէլի. քանզի երդուան նոցա ամ իշխանք ժողովրդեանն 'ի Տր Ած Իղի. և տրտնջեցին ամ ժողովուրդն զիշխանաւն։ 19 *Եւ ասեն ամ իշխանքն

|| Թուոց 21.24.

|| 2. Թագ. 21.2.

ցամ

ցմմ ժողովուրդն. մեք երդուաք նմա
'ի Տր̃ Ա.Ծ իսրայէլի, և ոչ կարեմք սպանել
նոցա: *Արդ՝ զայս արասցուք նոցա 20
ապրեցուցանել զնոսա. և սպասցուք
զնոսա. և մի եկեսցէ 'ի վր̃ մեր բար
կութի վասն երդմանն՝ զոր երդուաք
նոցա: *Եւ ասեն ցնոսա իշխանքն. 21
կեցցեն, և լինիցին փայտաբերք և ջրա
կիրք ամ ժողովրդեանդ. և եղեն
փայտակոտորք և ջրաբերք՝ որպէս և
ասացին նոցա իշխանքն: *Եւ կոչեաց 22
զնոսա միաՀամուռ յեսու. և խօսե_
ցաւ ընդ նոսա՝ և ասէ: ընդէր խա_
բեցիք զիս՝ և ասացիք՝ Հեռի եմք 'ի
ձէնջ յոյժ. և դուք գաւառականք էք
բնակչացս՝ որք 'ի միջի մերում:
*Եւ արդ՝ անիծեալք էք. և մի պա_ 23
կասեսցի 'ի ձէնջ փայտակոտոր և ջր_
կիր ինձ՝ և Ա.Յ իմում: *Պատասխա_ 24
նի ետուն՝ և ասեն ցյեսու. ազդեցու
թի ազդեղև մեզ՝ զորինչ Հրամայեաց
Տր̃ Ա.Ծ քո մովսէսի ծառայի իւրոյ, տալ
ձեզ զերկիրս զայս, և սատակել զամ
բնակիչս սորա յերեսաց ձերոց. և եր
կեաք յոյժ վասն անձանց մերոց յե_
րեսաց ձերոց. և արարաք զիրն զայն:
*Եւ արդ՝ աՀաւասիկ եմք ընդ ձեռամբ 25
ձերով. որպ Հաճոյ է ձեզ և որպ կամիք
առնել՝ արարէք: *Եւ արարին նոցա 26
այնպ. և ապրեցոյց զնս յեսու յաւուր
յայնմիկ 'ի ձեռաց որդւոցն իղի. և
ոչ կոտորեցին զնոսա: *Եւ կացոյց 27
զնս յաւուր յայնմիկ փայտակոտորս և
ջրկիրս ամ ժողովրդեանն՝ և սեղա_
նոյն Ա.Յ մինչև ցայսօր ժամանակի.
և 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տր̃:

## Գ.Լ: Ժ:

Եւ իբրև լուաւ ադոնիբեզեկ թա 1
գաւորն եէմի, թէ էառ յեսու
զգայի. և սատակեաց զնա. զորօրինակ
արար ընդ երիքով և ընդ թագաւորն
նորա. նոյնպէս արար ընդ գայի և ընդ
թագաւոր նր̃. և զի անձնատուր ե_
ղեն բնակիչքն գաբաւոնի առ յեսու
և առ իէլ՝ և եղեն 'ի միջի նց: *Զար 2
Հուրեցան յանձինս իւրեանց յոյժ.
քանզի գիտէին թէ քաղաք մեծ է
գաբաւոն որպ զմի 'ի մայրաքաղաքաց
թագաւորացն. քանզի նա մեծ էր
քան զգայի. և ամ արք նր̃ զօրաւորք:
*Եւ առաքեաց ադոնիբեզեկ արքայ 3
եէմի առ ելամ արքայ քեբրոնի, և առ
քերամ արքայ յերիմութայ, և առ
յեփիէ արքայ լաքիսայ, և առ դաբիր
արքայ ոդողոմայ, և ասէ: *Եկայք՝ 4
ելէք առ իս՝ և օգնեցէք ինձ. և տա_
ցուք պատերազմ ընդ գաբաւոնի. զի
անձնատուրք եղեն առ յեսու և առ
5 որդիսն իսրայէլի: *Եւ գումարե_
ցան՝ և ելին Հինգ թագաւորքն յեբու_
սայեցւոց. թագաւորն երուսաղէմի. և
թագաւորն քեբրոնի. և լաքիսայ. և
թագաւորն յերիմութայ. և թագա_
ւորն ոդողոմայ. ինքեանք և ամենայն
ժողովուրդն նոցա. և նստան զգաբա_
6 ւոնիւ՝ և պաշարեցին զնա: *Եւ առա_
քեցին բնակիչք գաբաւոնի առ յե_
սու 'ի բանակն իէլի 'ի գաղգաղայ՝ և
ասեն. մի թողացուսցես զձեռն քո
'ի ծառայից քոց. ել առ մեզ վաղվա
ղակի՝ և ապրեցո զմեզ. և օգնեա մեզ.
զի ժողովեալք են 'ի վերայ մեր ամ
թագաւորք ամորՀացւոց՝ որք բնա_
7 կեալք են 'ի լեռնակողմանն: *Եւ
ել յեսու 'ի գաղգաղայ ինքն, և ամ
զօրն պատերազմող ընդ նմա. և ամ
8 որ կարող էր զօրութբ: *Եւ ասէ
Տր̃ ցյեսու. մի երկնչիցիս 'ի նոցանէ,
զի 'ի ձեռս քո մատնեցից զնոսա. և
ոչ ժուժկալեսցէ 'ի նոցանէ և ոչ մի
9 ոք առաջի ձեր: *Եւ եՀաս 'ի վերայ
նոցա յեսու յանկարծակի, զցայգն
10 ամ եկեալ 'ի գաղգաղայ: *Եւ զար_
Հուրեցոյց զնոսա Տր̃ յերեսաց իէլի.
և եբեկ զնոսա բեկումն մեծ 'ի գա_
բաւոն. և Հալածեցին զնոսա ընդ ճա
նապարՀ զառիվայրին բեթորոնայ. և
կոտորեցին զնոսա մինչև յազեկայ և
11 ցմակեդայ: *Եւ 'ի փախչելն նոցա
յերեսաց որդւոյն իսրայէլի ընդ զա_
ռիվայրն բեթորոնայ, և Տր̃ էարկ 'ի
վերայ նոցա քարինս կարկտի յերկ_
նից մինչև ցազեկայ. և եղեն բազումք
այնոքիկ՝ որք մեռան 'ի քարանց կարկ
տին, քան զայնոսիկ զորս կոտորեցին
որդիքն իսրայէլի սրով պատերազմի:
12 *Յայնժամ խօսեցաւ յեսու ընդ Տն՝
յաւուր յորում մատնեաց Տէր Ա.Ծ
զամորՀացին ընդ ձեռամբ որդւոցն
իէլի. 'ի ժամանակին յորում խորտա_
կեաց զնոսա 'ի գաբաւոն. և խորտա_
կեցան յերեսաց իսրայէլի. և ասէ յե_
սու. կացցէ արեգակն Հանդէպ գա_
բաւոնի և լուսին Հանդէպ ձորոյն ելո
13 նայ: *‖Եւ կացին արեգակն և լու_
սին 'ի կայի իւրեանց. մինչև էառ Ա.Ծ
վրէժ 'ի թշնամեաց նց. ոչ ապաքէն
գրեալ է այս 'ի գիրս ուղղութե. և
եկաց արեգակն 'ի մէջ երկնից. և ոչ
խաղաց ընդ արևմուտս. մինչև ցկա
14 տարումն աւուր միոյ: *Եւ ոչ եղև
այսպիսի օր՝ ոչ յառաջ և ոչ յետոյ
լսել Ա.Յ ձայնի մարդոյ. զի Տր̃ պա_
տերազմեցաւ խառն ընդ իսրայէլի:
15 *Եւ դարձաւ յեսու և ամ իէլ ընդ
նմա

‖Սիրաք 46.5. Եսայի 28.21.

նմա 'ի բանակն 'ի գաղգաղայ: 16 *Եւ փախեան հնգեքեան թագաւորքն այնոքիկ և թագեան 'ի յայրին 'ի մակեդայ: 17 *Եւ ազդ եղև յեսուայ՝ և ասեն. գտան հինգ թագաւորքն թագուցեալք 'ի յայրի անդ 'ի մակեդայ: 18 *Եւ ասէ յեսու. թաւալեցուցէք վէմս մեծամեծս 'ի բերան այրին. և կացուցէք 'ի վերայ նոցա արս պահել զնոսա: 19 *Բայց դուք մի դադարէք 'ի պնդելոյ զհետ թշնամեաց ձերոց. և հարէք 'ի վերջ նոցա. և մի տայք նոցա թոյլ մտանել 'ի քաղաքս իւրեանց. քանզի մատնեաց զնոսա Տէր Ած 'ի ձեռս մեր: 20 *Եւ եղև իբրև դադարեաց յեսու, և ամ որդիքն իղի 'ի կոտորելոյ զնս կոտորումն մեծ յոյժ մինչև իսպառ. և ապրեալքն, որք ապրեցան 'ի նոցանէ՝ մտին 'ի քաղաքս ամուրս: 21 *Եւ դարձաւ ամենայն ժողովուրդն 'ի բանակն առ յեսու 'ի մակեդայ ողջանդամ. և ոչոք կռնչեաց յորդւոցն իսրայելի լեզուաւ իւրով: 22 *Եւ ասէ յեսու. բացէք զայրն՝ և հանէք առ իս զհնգեսին թագաւորսն յայրէ անտի: 23 *Եւ արարին այնպէս. և հանին առ նա զհնգեսին թագաւորսն յայրէ անտի. զթագաւորն եէմի. և զթագաւորն քեբրոնի. և զթագաւորն յերիմութայ. և զթագաւորն լաքիսայ. և զթագաւորն ոդողոմայ: 24 *Եւ իբրև հանին զնոսա առ յեսու՝ կոչեաց զամ իսրայէլ զյառաջամարտիկս երթեալս ընդ նմա. և ասէ ցնս. մատիք յառաջ՝ և դիք զոտս ձեր 'ի վերայ պարանոցաց նոցա. և մատուցեալ եդին զոտս իւրեանց 'ի վերայ պարանոցաց նոցա: 25 *Եւ ասէ ցնոսա յեսու. մի երկնչիք 'ի նոցանէ՝ և մի զանգիտիցէք. քաջացարո՛ւք՝ և զօրացարո՛ւք. զի այսպէս արասցէ Տր ընդ ամենայն թշնամիս ձեր՝ ընդ որս դուք մարտնչիցիք: 26 *Եւ կոտորեաց զնոսա յեսու. և կախեաց զնս հնգեսին զփայտից. և կային կախեալ զփայտիցն մինչև ցերեկոյ: 27 *‖Եւ եղև ընդ արևմուտս, հրամայեաց յեսու և իջուցին զնոսա 'ի փայտիցն. և ընկեցին յայրն՝ յոր փախուցեալ անկեալ էին. և թաւալեցուցին քարինս մեծամեծս 'ի վերայ այրին մինչև ցայսօր ժամանակի: 28 *Եւ զմակեդա առին յաւուր յայնմիկ. և կոտորեցին զնա սրով սուսերի. և զթագաւորն նորա. և սատակեցին զնա՝ և զամ շնչաւոր որ 'ի նմա. և ոչ ոք մնաց 'ի նմա ապրեալ և փախուցեալ. և արար ընդ թագաւորին մակեդայ. զոր օրինակ արար ընդ թագաւորին երիքովի: 29 *Եւ գնաց յեսու և ամենայն իէլ ընդ նմա 'ի մակեդայէ 'ի լեբնայ. և պաշարեցին զլեբնայ: 30 *Եւ մատնեաց զնա Տր 'ի ձեռս իէլի. և էառ զնա, և զթագաւոր նորա՝ և կոտորեաց զնա սրով սուսերի. և զամ շնչաւոր որ 'ի նմա. և ոչ մնաց 'ի նմա և ոչ մի ապրեալ և փախստական. և արար ընդ թագաւորն նորա ‖զոր օրինակ արար ընդ թագաւորին երիքովի: 31 *Եւ գնաց յեսու և ամ իէլ ընդ նմա 'ի լեբնայէ 'ի լաքիս. և նստաւ զնովաւ՝ և պաշարեաց: 32 *Եւ մատնեաց Տր զլաքիս 'ի ձեռս իսրայելի. և էառ զնա յաւուրն երկրորդի. և կոտորեաց զնա բերանով սրոյ. և սատակեաց զնա՝ զոր օրինակ արար ընդ լեբնայն: 33 *Յայնժամ ել էլամ արքայ դազերայ օգնել լաքիսայ. և եհար զնա յեսու սրով սուսերի և զզօրս նորա՝ մինչև չմնալ 'ի նոցանէ ապրեալ և փախստական: 34 *Եւ չուեաց յեսու և ամենայն իէլ ընդ նմա 'ի լաքիսայ՝ յոդողոմ. և նստաւ զնովաւ՝ և պաշարեաց զնա. և մատնեաց զնա Տր 'ի ձեռս իսրայելի: 35 *Եւ էառ զնա յաւուր յայնմիկ. և կոտորեաց զնա սրով սուսերի. և զամենայն շնչաւոր որ 'ի նմա յաւուր յայնմիկ կոտորեցին. զոր օրինակ արարին ընդ լաքիս: 36 *Եւ չուեաց յեսու և ամ իսրայէլ ընդ նմա յոդողոմայ 'ի քեբրոն. և նստան զնովաւ: 37 *Եւ առին զնա. և հարին զնա բերանով սուսերի. և զթագաւորն նորա. և զամ շնչաւոր որ 'ի նմա. և 'ի նմա ոչ ոք էր ապրեալ. և արարին ընդ նմա որպէս արարին ընդ ոդողոմայ. և սատակեցին զնա և զամ շնչաւոր. և զամենայն ինչ որ 'ի նմա: 38 *Եւ դարձաւ յեսու և ամ իէլ 'ի դաբիր. և նստեալ զնովաւ, 39 *Առին զնա և զթագաւորն նորա. և զամ զօրս նր. և հարին զնա բերանով սրոյ. և սատակեցին զնա և զամ շնչաւոր որ 'ի նմա. և ոչ թողին և ոչ մի ապրեալ. զոր օրինակ արարին ընդ քեբրոն՝ նոյնպէս արարին ը դաբիր և ընդ թագաւորն նր. և որպէս արարին ընդ լեբնայ և ը թագաւորն նր: 40 *Եւ եհար յեսու զամ երկիրն լեռնականս. և զնագեբ. և զդաշտականսն. և զասեդովթ և զամ թագաւորս նր. և ոչ եթող 'ի նմանէ ապրեալ. և զամ շնչաւոր սատակեցին 'ի նմանէ. զոր օրինակ պատուիրեաց Տր Ած իսրայելի: 41 *Եւ կոտորեաց զնս յեսու 'ի կադէսբառնեայ մինչև ցգազա. զամ երկիրն գոսոմայ մինչև ցգաբաւոն: 42 *Եւ զամ թագաւորսն նր.

‖ 2. Օրէ. 21. 23.

‖ Աէր. 6. 2. 21.

և զերկիր նոցա էառ յեսու միանգամայն. զի Տէր Ա̃ծ իսրայէլի համագունդ կռուէր ընդ ի̃ղի: *Եւ դարձաւ յեսու և ա̃մ ի̃ղ ընդ նմա 'ի բանակն 'ի գաղգաղայ: 43

## ԳԼ. ԺԱ.

1 Իբրև լուաւ յաբին՝ արքայ ասորայ. առաքեաց առ յոբաբ արքայ մադոնայ. և առ արքայն սեմերոնի. և առ արքայն աքիփայ: 2 *Եւ առ թագաւորս մեծի սիդոնայ 'ի լեռնայինսն. և յարաբաթ հանդէպ քեներեթայ. և 'ի դաշտայինսն. և 'ի նաբէթդովր. և 'ի ծովեզերեայս: 3 *Եւ քանանացիսն յարևելից կողմանէ. 'ի ծովեզերեայսն ամորհացւոց. և 'ի քետացիս. և փերեզացիս. և յեբուսացիս որ 'ի լերինն. և 'ի խևացիսն որ ընդ ահերմոնիւ 'ի մասեփայ: 4 *Եւ ելին նոքեանք և թագաւորք իւրեանց ընդ նոսա. և զօր բազում իբրև զաւազ առ ափն ծովու բազմութ̃բ: և երիվարք և կառք բազում յոյժ: 5 *Գումարեցան ա̃մ թագաւորքն այնոքիկ, և եկին 'ի միասին. և բանակեցան միանգամայն առ ջրովն մառոնայ տալ պատերազմ ընդ ի̃ղի: 6 *Եւ ասէ Տր̃ ցյեսու. մի՛ երկնչիր յերեսաց նոցա. զի վաղիւ 'ի սոյն ժամու մատնեցից ես զամենեսեան զն̃ս վանեալս առաջի որդւոցն իսրայէլի. զերիվարս նոցա կարթակոտորս արասցես. և զկառս նց̃ այրեսցես հրով: 7 *Եւ եկն յեսու և ա̃մ զօրն պատերազմօղ ընդ նմա 'ի վերայ նոցա 'ի ջուրն մառոնայ յանկարծօրէն. և անկան 'ի վերայ նց̃ 'ի լեռնակողմանն: 8 *Եւ մատնեաց զնոսա Տր̃ ընդ ձեռամբ ի̃ղի. և կոտորեալ զն̃ս արարին հալածական մինչև ցմեծն սիդոն. և մինչև ցմասրեփօթմայիմ. և մինչև ցդաշտն մասեփայ ընդ արևելս. և կոտորեաց զնոսա մինչև չմնալոյ 'ի նոցանէ ապրեալ: 9 *Եւ արար ընդ ն̃ս յեսու՝ որպէս պատուիրեաց նմա Տր̃: զերիվարս նոցա կարթակոտորս արար. և զկառս նոցա այրեաց հրով: 10 *Եւ դարձաւ յեսու 'ի ժամանակին յայնմիկ. և էառ զասոր և զթագաւորն նորա. և սպան զնա. զի ասոր էր նախ իշխան ա̃մ թագաւորութեացն այնոցիկ: 11 *Եւ կոտորեցին զա̃մ շնչաւոր որ 'ի նմա̃ սրով սուսերի: և սատակեցին զամենեսին. և ոչ մնաց 'ի նմա շնչաւոր: և զասոր այրեցին հրով: 12 *Եւ զա̃մ քաղաքս թագաւորութեանցն այնոցիկ՝ և զթագաւորս նց̃ էառ յեսու՝ և ‖ կոտորեաց զնոսա սրով սուսերի. և սատակեաց զնոսա. զոր օրինակ հրամայեաց նոցա մովսէս ծառայ Տն̃: 13 *Բայց զա̃մ քաղաքս հողացուցեալս 'ի սոցանէ ոչ այրեաց ի̃ղ. բայց միայն զասոր, զոր այրեաց յեսու: 14 *Եւ զա̃մ կապուտ նց̃ և զանասուն առին իւրեանց յաւարի որդիքն ի̃ղի. բայց զն̃ս զամենեսին սատակեցին սրով սուսերի մինչև կորուսին զնոսա. և ոչ թողին 'ի նոցանէ և ոչ մի շնչաւոր: 15 *‖ Զոր օրինակ հրամայեաց Տր̃ մովսիսի ծառայի իւրում. և որպէս պատուիրեաց մովսէս յեսուայ՝ նոյնպ̃ արար յեսու. և ոչ էանց և ոչ զինչ իք յա̃մ զոր պատուիրեաց նմա մովսէս: 16 *Եւ էառ յեսու զամենայն երկիրն զայն. զլեռնակողմն. և զա̃մ երկիրն նագեբ. և զա̃մ երկիրն գոսոմ. և զդաշտայինսն և զարևմուտսն. և զլեառն ի̃ղի. և զհովիտս նորա՝ որ առ լերամբն: 17 *'Ի լեռնէն աքելայ և ցելոն սուրայ. մինչև ցբաաղ գադ: և զդաշտայինսն լիբանանու առ ստորոտն ահերմոնի: և զթագաւորս նց̃. զամենեսին էառ, և կոտորեաց: 18 *Եւ աւուրս բազումս արար յեսու ընդ ա̃մ թագաւորս ընդ այնոսիկ պատերազմ: 19 *Եւ ոչ էր քաղաք՝ զոր ոչ մատնեաց Տէր որդւոցն ի̃ղի. բաց 'ի խևացւոյն՝ որ բնակեալ էր 'ի գաբաւոն. զամենեսին էառ պատերազմաւ: 20 *Զի 'ի Տէ̃ կարծրանային սիրտք նց̃ պատահել պատերազմաւ իսրայէլի՝ զի սատակեսցին: և մի՛ տացի նոցա ողորմութի̃. այլ զի սատակեսցին ոպ̃ խօսեցաւ Տէր ընդ մովսէսի: 21 *Եւ եկն յեսու 'ի ժամանակին յայնմիկ՝ և սատակեաց զենակիմսն. 'ի լեռնակողմն քեբրոնի՝ և դաբիրայ. և յանոբայ. և յա̃մ լեռնէն իսրայէլի. և յա̃մ լեռնէն յուդայ. հանդերձ քաղաքօք նոցա. և սատակեաց զնոսա յեսու: 22 *Եւ ոչ մնաց յենակիմացն՝ յորդւոցն իսրայէլի. բայց միայն 'ի գազայ. և 'ի գէթ. և յասեդօթ մնացին: 23 *Եւ էառ յեսու զա̃մ երկիրն որպէս պատուիրեաց Տր̃ մովսէսի: և ետ յեսու ժառանգութի̃ ի̃ղի վիճակաւ ըստ ցեղից նոցա: և դադարեաց երկիրն պատերազմել:

## ԳԼ. ԺԲ.

1 Եւ այսոքիկ են թագաւորք՝ զորս կոտորեաց մովսէս, և որդիքն ի̃ղի. և ժառանգեցին զերկիրն նոցա յայնկոյս յորդանանու յարևմտից կողմանէ. 'ի ձորոյն առնոնայ մինչև ցլեառն ահերմոն. և զա̃մ զարաբայ յարևելից կողմանէ: 2 *Զսեհոն թագաւ-

‖2. Օրէ. 7. 1.

‖ Ելք. 34. 11. 2. Օրէ. 7. 2.

դաւոր ամօրհացւոց՝ որ բնակեալ էր
յեսեբօն. և տիրէր յարոէրայ մինչև
ցձորն առնոնայ. զեզերբ ձորոյն. և
զկէսն գաղաադու մինչև ցհեղեղատն
յաբօկայ. սահմանք որդւոցն ամոնայ:
3 *Եւ յարաբայ՝ մինչև ցծովն քեներե
թայ՝ և ընդ արևելս մինչև ցծովն աղի
յարևելից՝ ընդ ճանապարհն ասեսմօ
թայ. ՚ի թեմանայ որ է ընդ ասեդօ_
թաւ ՚ի փասգայն: 4 *Եւ սահմանք
ովգայ արքային բասանու՝ որ մնացեալ
էր ՚ի սկայից անտի. որ բնակեալ էր
յաստարօթ և յեդրային: 5 *Իշխան ՚ի
լերինն ահերմօնի և ՚ի սելքայ. և զամ
բասան. մինչև ՚ի սահմանս գեսու_
րայ. և մաքաթի. և զկէս գաղաադու
սահմանացն սեհօնի արքայի եսեբօ_
նայ: 6 *Եւ մովսէս ծառայ Տն և որդիքն
իսրայէլի հարին զնոսա. և ետ զայն
մովսէս ծառայ Տն ՚ի ժառանգութի
ռուբինի, և գադայ. և կիսոյ ցեղին
մանասէի: 7 *Եւ այսոքիկ են թագա
որք ամօրհացւոց՝ զորս կոտորեաց յե
սու և որդիքն իսրայէլի յայնկոյս յոր
դանանու՝ առ ծովեզերբն բաաղգա
դու ՚ի դաշտին լիբանանու. մինչև
ցլեառն աղօկայ յելսն սեիրայ: և ետ
զնոսա յեսու ցեղիցն իլի ՚ի ժառան
գութի ըստ վիճակաց նց: 8 *Ի լերինն
և ՚ի դաշտի. և յարաբա. և յասեդօթ.
և յանապատին և ՚ի նագեբ: զքետա_
ցին. և զամօրհացին. և զքանանացին.
և զփերեզացին. և զխևացին. և զգեր
գեսացին. և զյեբուսացին: 9 *Զթա
գաւորն երիքովի զմի: զթագաւորն
գայեայ որ մերձ ՚ի բեթէլ զմի:
10 *Զթագաւորն յերուսաղէմի զմի:
զթագաւորն քեբրօնի զմի: 11 *Զթա_
գաւորն յերիմութայ զմի: զթագաւ_
որն լաքիսայ զմի: 12 *Զթագաւորն
էգղօնի զմի: զթագաւորն գազերայ
զմի: 13 *Զթագաւորն դաբիրայ զմի:
զթագաւորն գեսեմայ զմի: 14 *Զթա_
գաւոր հերմեայ զմի: զթագաւորն
աբերայ զմի: 15 *Զթագաւորն ղոբնայ
զմի: զթագաւորն ոդողմայ զմի:
16 *Զթագաւորն մակեդայ զմի: զթա_
գաւորն բեթէլայ զմի: 17 *Զթագաւորն
թափուայ զմի: զթագաւորն ոփերայ
զմի: 18 *Զթագաւորն նափեկայ զմի:
զթագաւորն սարօնայ զմի: 19 *Զթա_
գաւորն մադօն զմի: զթագաւորն ասոր
րայ զմի: 20 *Զթագաւորն սամրօնայ
(զմի: զթագաւորն) մառօնայ զմի:
զթագաւորն աքսափայ զմի: 21 *Զթա_
գաւորն թանաքայ զմի: զթագաւորն
մակեդդովայ զմի: 22 *Զթագաւորն
կադեսայ զմի: զթագաւորն յեկնօմայ

23 զքերմելայն զմի: *Զթագաւորն
դովրայ զնափեթդօրայ զմի: զթագաւ
որն գեղիմայ զգեղգեղայն զմի:
24 *Զթագաւորն թերսայ զմի: ամենե
քեան սոքա թագաւորք քսանևմին: 31

## ԳԼ: ԺԳ:

1 Եւ յեսու ծերացեալ և անցեալ
զաւուրբք. և ասէ Տէր ցյեսու.
դու ծերացեալ ես և անցեալ զաւ_
ուրբք: և երկիր բազում մնացեալ է ՚ի
2 ժառանգութենէ: *Եւ այս է երկիրն
մնացեալ. ամ սահմանքն փղշտացւոց:
3 գեսուրի: *Եւ քանանացին. յանշի_
նէ անտի ընդդէմ եգիպտոսի, մինչև
՚ի սահմանս ակկարօնի. ընդ աջմէ քա
նանացւոց՝ համարի հնգից թագաւո
րացն փղշտացւոց. գազացւոցն. և ազով
տացւոց. և ասկաղօնացւոցն. և գե_
թացւոցն և ակկարօնացւոց. և խևաց
4 ւոցն ՚ի թեմանայ: *Եւ ամ երկիրն
քանանացւոյն: գազայ. և սիդօնացիք.
մինչև ցյափեկայ՝ մինչև ցսահմանս
5 ամօրհացւոյն: *Եւ զամ երկիրն գա
բայ՝ ՚ի փղշտացւոց. և զամ լիբանան
յելիցն արևու՝ ՚ի գաղգաղայ՝ առ ո_
տամբ լերինն ահերմօնի մինչև ցմուտս
6 եմաթայ: *Ամենայն որ բնակեալ իցէ
զլեռնակողմն՝ ՚ի լիբանանէ մինչև ՚ի
մասերեփօթմայիմ: և զամ սիդօնա_
ցիս. ես սատակեցից զնոսա յերեսաց
որդւոցն իլի. բայց դու բաշխեա զնա
՚ի ժառանգութի իլի՝ որպէս պատ_
7 ուիրեցի քեզ: *Եւ արդ՝ բաժանեա
զերկիրս զայս ՚ի ժառանգութի ինն
ցեղիցն. և կիսոյ ցեղին մանասէի:
(՚ի յորդանանէ մինչև ցծովն մեծ ընդ
կողմն արևմտից՝ տացես զնա: և ծովն
8 մեծ սահմանեսցէ:) ‖ *Եւ երկուց ցե
ղիցն՝ և կիսոյ ցեղին մանասէի՝ որք
են ընդ ռուբինի և ընդ գադայ՝ որք
առին զժառանգութի իւրեանց՝ զոր
ետ մովսէս յայնկոյս յորդանանու յա_
րևելից՝ բաժանեաց նոցա մովսէս ծա
9 ռայ Տն: *Յարոէրայ՝ որ է առ եզերբ
հեղեղատին առնոնայ. և զքաղաքն
որ ՚ի մէջ ձորոյն. և զամենայն միսոր.
10 ՚ի մեդաբայ մինչև ցդեբօն: *Զամ
քաղաքս սեհօնի արքայի ամօրհաց_
ւոց. որ թագաւորեաց յեսեբօն. մինչև
11 ցսահմանս որդւոցն ամոնայ: *Եւ
զգաղաադայինն. և զսահմանս գեսու
րայ. և զմաքաթեայ և զամ լեառն
ահերմօն. զամ բասանաստան մինչև
12 ցսելքայ: *Եւ զամ թագաւորութի
ովգայ ՚ի բասան. որ թագաւորեաց
յաստարօթ. և յեդրային. նա մնաց
՚ի մնացորդաց սկայիցն. և եհար զնա

‖ Թուոց 32. 33. Յես. 22. ե.

մովսէս՝ և սատակեաց։ 13 *Եւ ոչ սատակեցին որդիքն իսրայէլի զգեսուրի. և զմաքաթի. և զքանանացին. և բնակէր թագաւորն գեսուրայ և մաքաթեայ 'ի մէջ որդւոցն իէլի մինչև ցայսօր։ 14 *Բայց ցեղին ղևեայ ոչ տուաւ բաժին և ժառանգութիւն. զի Տր Ա̄ծ իսրայէլի է նց ժառանգութիւն՝ որպէս ասաց նց Տր։ (և այսոքիկ են բաժինք՝ զորս բաժանեաց մովսէս որդւոցն իէլի. յառաբովթ մովաբ յայնկոյս յորդանանու յանդիման երիքովի։) 15 *Եւ ետ մովսէս ըստ ցեղին ռուբենի և ը̄ տոհմից նոցա։ 16 *Եւ եղեն սահմանք նոցա յարոէրայ՝ որ կայ յանդիման ձորոյն առնոնայ. և քաղաքն 'ի ձորն առնոնայ. և ա̄մ միսոր. և մեդաբայ։

Թուոց 18.20. — Եսեբոն — Թուոց 31.8.

17 *Մինչև ցեսեբոն. և զա̄մ քաղաքս նց՝ որք են 'ի միսոր. և զդեբոն. և զբամովթ՝ բայաղ. և զտունս բաաղմովթայ։ 18 *Եւ զյասա, և զկեդմովթ. և զմեփայաթ։ 19 *Եւ զկարիաթեմ. և զսեբամա. և զսարթ. և զսիովր 'ի լերինն ենակայ։ 20 *Եւ զբեթփոգովր. և զասեդովթ փասգայ. և զբեթսիմովթ. և 21 զա̄մ քաղաքս միսորայ։ *Եւ զա̄մ թագաւորութիւն սեհոնի արքայի ամորհացւոց. որ թագաւորեաց յեսեբոն. զոր եհար մովսէս՝ զնա և զիշխանս մադիամու. և զեւի. և զռոկոմ. և զսուր. և զուր. և զռոբէ. և զիշխանս պարասխոնացն զբնակեալս յերկրին։ 22 *Եւ զբաղաամ՝ բէովրեան զհարցուկն, կոտորեցին որդիքն իսրայէլի սրով 'ի միում վայրկենի։ 23 *Եւ եղեն սահմանքն ռուբենի յորդանան սահման։ այս է ժառանգութիւն որդւոցն ռուբենի ըստ տոհմից իւրեանց. քաղաքք և աւանք նոցա։ 24 *Եւ ետ մովսէս որդւոցն գադայ ը̄ տոհմից իւրեանց։ 25 *Եւ եղեն նոցա սահմանք յազերայ. և ա̄մ քաղաքք գաղաադու. և կէս երկրի որդւոցն ամոնայ մինչև ցարոէր. որ է յանդիման առաբայ։ 26 *Եւ յեսեբոնայ մինչև ցհռամովթ՝ առ մասփայիւ. և բոտանիմ. և մանայեմ. մինչև ցսահմանսն դաբիրայ։ 27 *Եւ յեմակն բեթարամ. և բեթնամրա. և սոքովթ. և սափոն. և զայլ ևս թագաւորութիւն սեհոնի արքայի եսեբոնայ. յորդանան սահման է՝ մինչև ցեզր ծովուն քենեբեթայ. յայնկոյս յորդանանու յարևելից։ 28 *Այս է ժառանգութիւն որդւոցն գադայ ըստ տոհմից իւրեանց. ըստ քաղաքաց նոցա՝ և ագարակք նոցին։ 29 *Եւ ետ մովսէս կիսոյ ցեղին մանասէի. և եղև կիսոյ ցեղի որդւոցն մանասէի ըստ տոհմից իւրեանց։ 30 *Եւ եղեն սահմանք նոցա 'ի մանայեմայ. և ա̄մ բասան. և ամենայն թագաւորութիւն ովգայ արքային բասանու. և ա̄մ աւանք յայիրայ. որք են 'ի բասանանիտի. վաթսուն քաղաք։ 31 *Եւ կէսն գաղաադու. և յաստարովթ. և յեդրային. քաղաքք թագաւորութեանն ովգայ 'ի բասանաստանի։ և տուան որդւոցն մաքիրայ որդւոյ մանասէի. և կիսոց որդւոցն մանասէի ըստ տոհմից իւրեանց։ 32 *Այսք են զորս ժառանգեցոյց մովսէս յայնկոյս յորդանանու յառաբովթ մովաբ յայնմ կողմանէ յորդանանու հանդէպ երիքովի յարևելից։ 33 *Եւ ցեղին ղևեայ ոչ ետ մովսէս ժառանգութիւն. զի Տր Ա̄ծ իսրայէլի ինքնին է ժառանգութիւն նոցա՝ որպէս խօսեցաւ ընդ նոսա։

Թուոց 18.20.

## ԳԼ: ԺԴ:

1 Եւ սոքա են՝ որք ժառանգեցուցին որդւոցն իսրայէլի յերկրին քանանացւոց՝ որոց ժառանգեցուցին եղիազար քահանայ. և յեսու նաւեան. և իշխանք նահապետութեան ցեղից որդւոցն իսրայէլի։ 2 *Եւ վիճակօք ժառանգեցին՝ զոր օրինակ պատուիրեաց Տր 'ի ձեռն յեսուայ՝ ինննեցունց ցեղիցն. և կիսոյ ցեղին։ 3 *Քանզի ետ մովսէս զժառանգութիւն երկուց ցեղիցն և կիսոյ ցեղին յայնկոյս յորդանանու։ և ղևտացւոցն ոչ ետ զժառանգութիւն 'ի մէջ նոցա։ 4 *Զի էին որդիքն յովսեփու երկու ցեղք. մանասէ և եփրեմ. և ոչ տուաւ բաժին յերկրի ղևտացւոց, այլ քաղաքք բնակելոյ. և զատուցեալս ըստ նոցին՝ խաշանց նոցա։ 5 *Զոր օրինակ պատուիրեաց Տէր մովսէսի՝ նոյնպէս արարին որդիքն իսրայէլի՝ և բաժանեցին զերկիրն։ 6 *Եւ մատեան որդիքն յուդայ առ յեսու 'ի գաղգաղայ. և ասէ ցնա քաղեբ յեփոնեայ կենեզեան. դու ինքնին գիտես զբանն՝ զոր խօսեցաւ Տր ընդ մովսէսի առն Ա̄յ՝ վասն իմ 7 և վ̄ քո 'ի կադէսբառնեայ։ *Զի քառասնամեայ էի ես, յորժամ առաքեաց զիս մովսէս ծառայ Տն 'ի կադէսբառնեայ լրտեսել զերկիրն. և բերաք 8 նմա զրոյց ըստ մտաց նորա։ *Բայց եղբարքն իմ՝ որք ելին ընդ իս՝ թիւրեցին զմիտս ժողովրդեանն. բայց ես յաւելայ երթալ զհետ Տն Ա̄յ իմոյ։ 9 *Եւ երդուաւ մովսէս յաւուր յայնմիկ՝ և ասէ. երկիր, յոր հասեր՝ քեզ լիցի 'ի ժառանգութիւն և որդւոց քոց յաւիտեան. զի յաւելայ երթալ զհետ Տն 10 Ա̄յ իմոյ։ *Եւ արդ կերակրեաց զիս Տր

Թուոց 34.13. — Թուոց 14.24. — Ա̄ 1. 3.

Տր̄ ոչ̄ ասաց՝ այս ամ քառասներորդ հինգերորդ է՝ յորմէհետէ խօսեցաւ Տր̄ զբանս զայս ընդ Մովսէսի. և շրջեցաւ Իէլ յանապատին. և արդ ահաւասիկ եմ ես այսօր ամաց ութսուն և հնգից։ 11 * Եւ կարող եմ այսօր՝ ոչ̄ յորժամ առաքեաց զիս Մովսէս։ ‖ Նոյնպէս և արդ կարող եմ՝ մտանել և ելանել ՚ի պատերազմ։ 12 * Եւ այժմ խնդրեմ ՚ի քէն զլեառն զայն՝ ոչ̄ ասաց Տէր յաւուր յայնմիկ. զի դու լուար զբանս զայս յաւուր յայնմիկ։ և արդ ա՛ռնիկ Ենակիմքն են անդ՝ և քաղաքք ամուրք և մեծամեծք։ արդ եթէ Տր̄ ընդ իս է՝ սատակեցից զնո̄, ոչ̄ և ասաց ինձ Տր̄։ 13 * ‖ Եւ օրհնեաց զնա յեսու. և ետ զՔեբրոն քաղեբայ որդւոյ յեփոնեայ կենեզացւոյ ՚ի ժառանգութի։ 14 * Վասն այնորիկ եղև Քեբրոն քաղեբայ որդւոյ յեփոնեայ կենեզացւոյ ՚ի ժառանգութի. վասն երթալոյ նորա զհետ հրամանի Տն̄ Այ̄ իսրայէլի։ 15 * Եւ անուն Քեբրոնի էր յառաջ քաղաք արբոկ։ նա էր մայր քաղաքաց Ենակիմացն։ և երկիրն դադարեաց ՚ի պատերազմէ։

‖ Սիրաք. 46.11.
‖ 1. Մնաց. 2.56.

## Գլ: ԺԵ:

1 Ե՛ւ եղեն սահմանք ցեղի որդւոցն յուդայ. ‖ ըստ տոհմից իւրեանց ՚ի սահմանացն եդովմայեցւոց. ՚ի սինն անապատէ մինչև ՚ի կադէս։ 2 * Ընդ հարաւակողմն եղեն նց̄ սահմանք՝ ՚ի հարաւոյ մինչև յեզր ծովուն աղւոյ. ՚ի սարոյն որ իջանէ ՚ի հարաւակողմն։ 3 * Եւ անցանեն մինչև ՚ի զառ ի վայրին ակրաբիմայ. և պատին զսինաքաւ. և վերանան ՚ի հարաւոյ ցկադէսբառնեայ. և ելանեն ՚ի հոմն. և ձգին առ ադդարաւ. և պատին առ արևմուտքն կադէսայ։ 4 * Եւ երթան ցասեմոնայ. և հանեն մինչև ցձորն եգիպտացւոց. և եղիցին նոքա ելք սահմանացն ՚ի ծովակողմն. այսոքիկ են նց̄ սահմանք ՚ի հարաւոյ։ 5 * Եւ սահմանք յարևելից ամենայն ծովն աղի. մինչև ցեզրն յորդանանու։ և սահմանք նց̄ ընդ հիւսիսի. ՚ի սարոյ ծովուն և յեզերէ յորդանանու։ 6 * Հասանեն սահմանքն ՚ի բեթ ագղայ. և շրջին առ հիւսիսով ցբեթ արաբաւ. և վերանան սահմանքն առ բէօն վիմաւ որդւոցն ռուբինի։ 7 * Եւ ելանեն սահմանքն առ չորրորդ մասամբ ձորոյն նաքովրայ. և ընդ հիւսիսակողմն. և իջանեն ՚ի գաղգաղ՝ որ է հանդէպ մատուցին ելոմիմայ. և ընդ հարաւակողմն. և հասանի սահմանն ՚ի ջուրն արեգ աղբեր. և եղիցի նց̄ ելք՝ աղբիւրն ռոգէլայ։ 8 * Եւ ելանեն սահմանքն ՚ի ձոր որդւոցն Ենովմայ. ՚ի թիկանց յեբուսայ ՚ի հարաւոյ՝ այն է երուսաղէմ։ և հանեն սահմանքն ՚ի գլուխ լերինն՝ որ է հանդէպ ձորոյն Ենովմայ ՚ի ծովակոյս կողմանէ՝ որ է յեզեր երկրին ռափայնոյ ընդ հիւսիսի։ 9 * Եւ հասանի սահմանն ՚ի գլխոյ լերինն յաղբիւր ջրոյն ափօթայ. և հատանէ զլեառն Եփրեմի ՚ի գայի. և հանէ սահմանն ՚ի բաաղ. այն է քաղաք յարիմայ։ 10 * Եւ պատի սահմանն ՚ի բաաղայ ՚ի ծովակողմն ՚ի լեառն սէիր. և պատի զթիկամբք քաղաքին յարիմայէ հիւսիսոյ. այն է քասղօն. և իջուցանէ յարեգ քաղաք. և անցանէ ՚ի հարաւ։ 11 * Եւ հատանէ սահմանն ՚ի թիկանց ակկարօնի ընդ հիւսիսի։ և հանեն սահմանքն ՚ի սաքքայօնայ. և անցանեն առ լերամբ երկրին բաաղայ. և հասանեն ցաբնէլ։ և եղիցին ելք սահմանաց նոցա ընդ ծովակողմն։ 12 * Եւ զսահման նոցա ՚ի ծովէ՝ ծովն մեծ պատանէ։ այսոքիկ են սահմանք որդւոցն յուդայ շուրջանակի. ըստ տոհմից իւրեանց։ 13 * Եւ քաղեբայ որդւոյ յեփոնեայ՝ ետ բաժին ՚ի մէջ որդւոցն յուդայ հրամանաւ Այ̄։ և ետ նմա յեսու զՔաղաքն արբօկ. զմայր քաղաքացն Ենակայ։ այն է Քեբրոն։ 14 * ‖ Եւ սատակեաց զնոսա անտի քաղէբ որդի յեփոնեայ. զերիս որդիսն Ենակայ. զսուսի. զթոլմայի. և զաքիման. ըղ ծնունդս Ենակայ։ 15 * Եւ ել անտի քաղէբ ՚ի վր̄ բնակչացն դաբիրայ. և անուն դաբիրայ էր յառաջագոյն քաղաք նամակաց։ 16 * Եւ ասէ քաղէբ։ որ ոք առցէ զՔաղաքն նամակաց, և տիրեսցէ նմա, տաց նմա զաքսա դուստր իմ կնութե։ 17 * Եւ էառ զնա գոթոնիէլ որդի կենեզի. եղբայր քաղեբայ կրտսեր։ և ետ նմա զաքսա դուստր իւր կնութե։ 18 * Եւ եղև յերթալն նր̄՝ խորհեցաւ ընդ նա՝ և ասէ. խնդրեցից ՚ի հօրէ իմմէ ագարակ։ և աղաղակեաց յիշոյ անտի։ և ասէ ցնա քաղէբ. զի՞ է քեզ։ 19 * Եւ ասէ ցնա. տո՛ւր ինձ օրհնութի. զի յերկիր նագեբ ետուր զիս. տո՛ւր ինձ զգողաթմայիմ. և ետ նմա քաղէբ զգողաթն վերին՝ և զգողաթն ներքին։ 20 * Այս է ժառանգութի ցեղի որդւոցն յուդայ. ըստ տոհմից իւրեանց։ 21 * Եւ եղեն նոցա քաղաքք։ քաղաք առաջին ցեղի որդւոցն յուդայ ՚ի սահմանս եդովմայ յանապատին։ կաբսէէլ. և 22 եդրայիմ։ և յագուր։ * Եւ կինա. և

դէ_

‖ Թուոց 34. 3.
‖ Դատ. 1.20.

Margin glosses: վերին; եարօն; բօէն; ելիոն; մինչև; զերկիր հարաւոյ ետ և երբ Բաղեբաւ ետուր ինձ

գեմմնա. և ադադա։ *23 Եւ կադէս. և ասոր. և իթնամ։ *24 Զիփ. և տելեմ։ և բաալոթ։ *25 Եւ քաղաքն ասերոն։ կարիոթ՝ եսրոն. այն է ասոր։
*26 Ամամ. և սամաա. և մոլադա։
*27 Եւ ասերգադդա՝ ասեմոն՝ և բեթփաղեթ։ *28 Եւ ասարսուղա. և բերսաբէէ. և աւանք նց. և ագարակք նոցա։ *29 Բաաղա. և աւիմ. և ասեմ։
*30 Եւ ելթողադ. և քսիղ. և երմա։
*31 Եւ սիկելեկ. և մադբեբենա. և սանսաննա։ *32 Եւ ղաբոթ. և սելեմի. և ային. և ռեմոն. քաղաքք քսան և ինն՝ և աւանք նոցա։ *33 Ի դաշտավայրս. եսթաւուղ. և սարաա. և ասնա։
*34 Եւ ռամոն. և զանով. և ադիաթեմ. և էնայիմ։ *35 Եւ յերիմութ. և օդողամ. և ներմա. և սոքով. և ազեկա։ *36 Եւ սարգարիմ. և գադերա. և ագարակք նոցա. քաղաքք չորեքտասանք և աւանք նց։ *37 Սենման. և ադասա. և մակդաղգադ։ *38 Եւ դաղաան. և մասփա. և յեքթրայել։
*39 Եւ լաքիս՝ և բազկաթ. և եգղոմ։
*40 Եւ քաբբա. և լամաս. և քաաղոմ։
*41 Եւ գադերոթ. և բեթլագոն. և նովմա. և մակեդդա։ քաղաքք վեշտասան և աւանք նոցա։ *42 Լ եբնա. և աթեր. և ասան։ *43 Եւ յեփթա. և ասեննա. և նեսիբ։ *44 Եւ կեիլա. և աքեզիբ. և մարիսա. և ելեմոլմ։ քաղաքք ինն. և աւանք նոցա։ *45 Ակկարոն. և աւանք նորա. և ագարակք նորա։ *46 Եւ յակկարոնէ յեմէն. և ամ արուարձանք ազդարովդայ. և աւանք նոցա և ագարակք նոցա։

ազովտայ

*47 Գադա. և աւանք նր և ագարակք նորա. մինչև ցհեղեղատն եգիպտոսի. և ծովն մեծ զատուցանէ։ *48 Եւ ՚ի լեռնավայրսն՝ սափիր. և յեթեր. և սովքով։ *49 Եւ դեննա. և լեառն ահերմոն. և քաղաքն նամակաց. այն է դաբիր։ *50 Եւ անոբ. և եսթեմով. և անիմ։ *51 Եւ գոսոմ. և քիղոնոն. և գելոն. քաղաքք մետասան. և աւանք նց։ *52 Երեբ. և եսան. և երումա։
*53 Եւ յանում. և բեթ՝ թափուէ. և ափակա։ *54 Եւ քամմատա. և քաղաքն արբոկ. այն է քեբրոն. և սիովր։ քաղաքք ինն. և աւանք նոցա։ *55 Մաւոն. և քերմել. և զիփ. և յետտա։ *56 Եւ յեզրայել. և յեկդա. և զանովա։
*57 Ակիմ և գաբաա. գիբահ. և թամնա. քաղաքք մետասան։ և աւանք նոցա։ *58 Ալուղ. և բեթսուր. և գեդովր։ *59 Մարոթ. և բեթանովթ. և ելթեկեն. քաղաքք վեց. և աւանք նց։ (Թեկով. և եփրաթա. այն է բեթղեհեմ. և փագովր. և էտամ. և կուլոն. և տատամի. և սորես. և կարեմ. և գալլիմ. և բեթեր. և մանոքով. քաղաքք մետասան. և աւանք նոցա)
*60 Կարիաթբաալ. նա է քաղաք յարիմայ. և արաբա. քաղաքք երկու. և աւանք նց. և ագարակք իւրեանց։
*61 Բեթբարգիս. և բեթարաբա. և *62 մադոնն. և սովքովա։ *Եւ նեբսան. և քաղաքք աղտիցն. և ենգադիս. քաղաքք եօթն. և աւանք նոցա։ *63 Եւ յեբուսացին բնակեալ էր յերուսաղեմ. և ոչ կարացին որդիքն յուդայ մերժել ընդ նոսա. և բնակեցան յեբուսացիք ընդ որդիսն յուդայ յերուսաղեմ մինչև ցայսօր։

## Գլ։ ԺԶ։

1 Եւ եղեն որդւոցն յովսեփայ սահմանք. ՚ի յորդանանէ հանդէպ երիքովի. յարևելից ընդ անապատն. և ամբառնին յերիքովէ ՚ի լեռնակողմն անապատին ՚ի բեթելուզ։
2 *Եւ ելանեն ՚ի բեթելուզայ. և անցանեն առ սահմանօքն արքի՝ ատարոթայ։
3 *Եւ ելանեն ընդ ծովակողմն ՚ի սահմանսն յեփաղթեայ. մինչև ցսահմանս բեթորոնայ ներքնոյ. և մինչև ցգազեր. և եղիցին ելք նոցա ՚ի ծովակողմն։
4 *Եւ ժառանգեցին որդիքն յովսեփայ՝ եփրեմ և մանասէ։
5 *Եւ եղեն սահմանք որդւոցն եփրեմայ ըստ տոհմից իւրեանց. և եղեն սահմանք ժառանգութե նց. յարևելից. ատարոթ. և ադար. մինչև ցբեթորոնն վերին. և ցգազեր։
6 *Եւ անցանեն սահմանքն ընդ ծովակողմն ՚ի մակոթի հիւսիսոյ. և պատեն սահմանն ընդ արևելս ՚ի թենաթսելով. և անցցէ յարևելից առ յանովաւ։
7 *Եւ իջցէ յանովայ յատարոթ. և ՚ի նաարաթա. և աւանք նոցա. և անցցեն առ երիքովաւ. և հասցեն ՚ի յորդանան։
8 *Եւ ՚ի թափուեայ անցցեն սահմանքն ՚ի ծովակողմն ՚ի հեղեղատն կանայ. և եղիցին ելք նորա ՚ի ծովակողմն. այս է ժառանգութիւն ցեղի որդւոցն եփրեմի ըստ տոհմից իւրեանց։
9 *Եւ քաղաքքն զատուցեալք որդւոցն եփրեմի. ՚ի մէջ ժառանգութե որդւոցն մանասէի. և ամ քաղաքք և աւանք նոցա։
10 *Եւ ոչ կորոյս եփրեմ զքանանացին բնակեալ ՚ի գազեր. և բնակէր քանանացին ՚ի մէջ եփրեմի մինչև ցայսօր։ (մինչև ել փարաւոն արքայ եգիպտացւոց և էառ զքաղաքն՝ և այրեաց զնա հրով. և զքանանացին զբնակեալսն ՚ի գազեր խոտեաց.

տեաց. և ետ զնա փարաւոն պաշտա
տակամն դստեր իւրում. ) և եղեն
ծառայք հարկատուք։

## ԳԼ. ԺԷ.

Եւ՛ եղեն սահմանք ցեղի որդւոցն 1
մանասէի. զի նա էր անդրանիկ
յովսեփայ՝ մաքիրայ անդրանկանն մա
նասէի հօր գաղաադու, քանզի այր
պատերազմող էր. գաղաադայինն ՚ի
‖Թւոց 26.29. բասանատան։ *‖Եւ՛ եղև այլոց որդ 2
ւոցն մանասէի. ըստ տոհմից իւրեանց,
որդւոցն աքիեզերայ. և որդւոցն քեղ
կեայ. և որդւոցն երիէլայ. և որդւոցն
սիքեմայ. և որդւոցն սեմիրայեայ. և
որդւոցն ոփերայ։ սոքա են որդիք մա
նասէի որդւոյ յովսեփայ արուք ըստ
‖Թւոց 27.1. և 36.2.11 տոհմից իւրեանց։ * ‖Եւ՛ սաղպաա 3
դայ որդւոյ ոփերայ. որդւոյ գաղաա
դու՝ որդւոյ մաքիրայ. որդւոյ մանա
սէի, ոչ գոյին նորա ուստերք, այլ
դստերք. և այս են անուանք դստե
րացն սաղպաադայ. մաաղա և նուա.
և եգղա։ և մեղքա և թերսա։ *Կա 4
ցին առաջի եղիազարու քահանայի՝ և
առաջի յեսուայ որդւոյ նաւեայ. և
առաջի իշխանացն՝ և ասեն։ Ա՛ծ պատ
ուիրեաց ՚ի ձեռն մովսեսի տալ մեզ
ժառանգութիւն ՚ի մէջ եղբարց մերոց.
և տուաւ նոցա ժառանգութիւն հրա
մանաւ Տն ՚ի մէջ եղբարց հօր իւր
եանց։ * Եւ՛ ել վիճակ մանասէի 5
դաշտն ղաբեկայ. և գաղաադի. և բա
սանայ. որ է յայնկոյս յորդանանու։
* Զի դստերք որդւոց մանասէի ժա 6
ռանգեցին վիճակ ՚ի մէջ եղբարց իւր
եանց. և երկիրն գաղաադու եղև որդ
ւոցն մանասէի մնացելոցն։ *Եւ՛ եղեն 7
սահմանք որդւոցն մանասէի, յասեր՝
մաքթօթայ. որ է հանդէպ սիքեմայ.
և երթան սահմանքն ցյամին. և յա
սեբ՝ յաղբիւրն թափթօթայ. մանա
սէի եղիցի երկիր թափթօթայ։ *Եւ՛ 8
թափթօթայ ՚ի սահմանս մանասէի
որդւոցն եփրեմայ։ *Եւ՛ իջանեն սահ 9
մանքն ՚ի ձորն կանայի ընդ հարաւա
կողմն հանդէպ ձորոյն յայիրայ. և
բեւեկնին եփրեմայ ՚ի մէջ քաղաքին
մանասէի։ և սահմանք մանասէի ընդ
մինչև հիւսիսի ցհեղեղատն. և եղիցին նո
ելք ծովն։ * Ի հարաւակողմն կուսէ 10
եփրեմայ. և ՚ի հիւսիսոյ մանասէի. և
եղիցի ծովն սահման նոցա։ և յասեր
յարիցեն ՚ի հիւսիսոյ կողմանէ։ և յի
սաքար յարևելից կողմանէ։ *Եւ՛ ե 11
ղիցի մանասէ ընդ իսաքար՝ և ընդ
ասեր։ բեթսան. և աւանք նոցա։ և
աւբղամ և դստերք նորա։ բնակիչք
ենդօրայ. և բնակիչք մակեդովայ՝ և դաստա_
աւանք նորա. և բնակիչք տանաքայ կերտ
և աւանք նորա. և երրորդ նափեթայ
12 և աւանք նորա։ *Եւ ոչ կարացին որ
դիքն մանասէի սատակել զքաղաքսն
զայնոսիկ։ և սկսաւ քանանացին բնա
13 կել յերկրին յայնմիկ։ *Եւ՛ եղև իբրև
յաղթահարեցին որդիքն իսրայելի.
արարին զքանանացիսն հնազանդս.
բայց սատակելով ոչ սատակեցին զնս։
14 * Ընդդէմ դարձան որդիք յովսեփայ
յեսուայ՝ և ասեն։ ընդէր ժառանգե
ցուցեր մեզ զմի ժառանգութիւն՝ և զմի
վիճակ. և ես ժողովուրդ բազում եմ.
15 և Ա՛ծ օրհնեաց զիս։ * Ասէ ցնոսա
յեսու. եթէ ժողովուրդ բազում ես
դու, ել յանտառն՝ և սրբեա՛ դու քեզ
զերկիրն. զփերեզացիսն և զռափայ_
ինսն։ եթէ նեղ իցէ քեզ լեառն
16 եփրեմի։ * Եւ՛ ասեն որդիքն յովսէ_
փայ։ չէ՛ մեզ բաւական լեառն եփրե
մայ։ և անդ ընտիր ընտիրք երիվա_
րաց. և զէն ոմ քանանացւոյն բնա_
կելոյ յերկրի իմում ընդ իս. ՚ի բեթ_
սան և յաւանս նր. և ՚ի ձորն յեզրայէ_
17 լի։ *Եւ խօսեցաւ յեսու ընդ որդիսն
յովսեփայ. ընդ եփրեմի և ընդ մանա
սէի՝ և ասէ։ թէ ժողովուրդ բազում
ես դու. և զօրութիւն բազում ունիս.
18 մի լիցի քեզ մի վիճակ։ * Անտառն
եղիցի քեզ. զի անտառ է և սրբեսցես
զնա։ և եղիցին քեզ ելք նորա յոր_
ժամ սատակեսցես զքանանացին։ զի
թէպէտ և երիվարք ընտիրք իցեն
նր, և զօրագոյն քան զքեզ իցէ, դու
յաղթահարեսցես զնա։

## ԳԼ. ԺԸ.

1 Եւ՛ եկեղեցացաւ ամ ժողովուրդ
որդւոցն իէի ՚ի սելով. և կանգ_
նեցին անդ զխորանն վկայութեն. և
2 երկիրն նուաճեցաւ ՚ի նոցանէ։ *Եւ
մնացին որդիքն իէի՝ և ոչ ժառանգե
3 ցին եօթն ցեղն։ * Եւ՛ ասէ ցնոսա
յեսու. մինչև յե՞րբ մեղկիցիք չմտա_
նել և ժառանգել զերկիրն՝ զոր ետ
4 ձեզ Տր Ա՛ծ հարցն մերոց։ *Տուք ինձ
երիս արս ՚ի ցեղէ. և առաքեցից զնս՝
և յարուցեալ անցանիցեն ընդ երկիրն՝
և գրեսցեն զնա առաջի իմ՝ թէ ո՞րպ
պարտ իցէ բաժանել զնա. և եկին
5 առ նա։ *Եւ՛ բաժանեաց նց եօթն
մասն։ յուդայ կացցէ նոցա սահման
՚ի հարաւոյ. և որդիքն յովսեփայ կաց_
ցեն ՚ի սահմանս իւրեանց ՚ի հիւսիսոյ։
6 * Եւ՛ դուք բաժանեցէք զերկիրն
յեօթն բաժին՝ և բերէք առ իս այսր.
և հանից ձեզ վիճակ աստ առաջի Տն
ԱԾ։

Այլ ։* Զի ոչ է ընդ ձեզ բաժին որդ- 7
ւոցն ղեւեայ՝ զի քահանայութիւն Տն է
բաժին նորա ։ և գադ՝ և ռուբէն, և
կէս ցեղին մանասէի, առին զժառան
գութիւն իւրեանց յայնկոյս յորդանա
նու յարևելս՝ զոր ետ նոցա մովսէս ծա
ռայ Տն ։* Եւ յարուցեալ արքն գնա- 8
ցին ։ և պատուիրեաց յեսու արանցն
երթելոց աշխարհագիր առնել զերկիրն ։
և ասէ ։ անցէք՝ գնացէք՝ և աշխար
հագրեցէք զերկիրն ։ և եկեսջիք
առ իս այսր ։ և հանից ձեզ վիճակս
առաջի Տն 'ի սելով ։ * Եւ գնացին 9
արքն՝ և շրջեցան ընդ երկիրն ։ և աշ
խարհագրեցին զերկիրն, և տեսին
զնա ։ և գրեցին ըստ քաղաքաց իւր-
եանց զեօթն բաժին 'ի մատենի ։ և
բերին առ յեսու 'ի բանակն 'ի սելով ։
* Եւ էարկ նց յեսու վիճակ 'ի սելով 10
առաջի Տն ։ և բաժանեաց անդ զեր
կիրն որդւոցն իսրայէլի՝ ըստ բաժան
մանց իւրեանց ։* Եւ ել նախ վիճակն 11
բենիամինի ըստ տոհմից իւրեանց ։ և
էին սահմանք վիճակի նոցա 'ի մէջ
յուդայ՝ և 'ի մէջ որդւոցն յովսեփայ ։
* Եւ եղեն սահմանք նոցա 'ի հիւսի- 12
սոյ յորդանանու ։ և ամբարձցին սահ
մանքն 'ի հարաւոյ երիքովի ընդ հիւ-
սիսի ։ և ամբարձցին 'ի լեառն ընդ
ծովակողմն ։ և ելիցին նորա ելք մաբ
դարայինն բեթաւնա ։ * Եւ անցցեն 13
անտի սահմանքն ‖ լուզայ ։ 'ի թիկանց
լուզայ՝ 'ի հարաւոյ կողմանէ՝ այն է
բեթէլ ։ և իջցեն սահմանքն ցատա-
րոթ ադարայ 'ի լեռնակողմն, որ է 'ի
հարաւոյ բեթորոնայ ներքնոյ ։ * Եւ 14
անցցեն սահմանքն՝ և պատեսցեն առ
եզերբն՝ որ հայի ընդ ծով 'ի հարաւոյ՝
'ի լեռնէն որ հանդէպ բեթորոնի է
ընդ հարաւոյ ։ և ելիցին նորա ելք 'ի
կարիաթ բաաղ ։ այն է կարիաթա-
րիմ քաղաք որդւոցն յուդայ ։ և այն է
եզր ընդ ծովակողմն ։ * Եւ եզր ընդ 15
հարաւ յեզերէ կարիաթ բաաղայ ։ և
անցանեն սահմանքն 'ի գային ։ և ել
ցեն յաղբիւր ջրոցն նափթովայ ։
* Եւ իջցեն սահմանքն յեզր լերինն՝ 16
որ է յանդիման հովտացն որդւոցն
ենովմայ՝ որ է մասն ենակայ ռափայ
նոցն 'ի հիւսիսի ։ և իջցեն 'ի գայիե-
նովմայ՝ 'ի թիկանց յեբուսայ 'ի հա-
րաւոյ ։ և իջցեն յաղբիւրն ռովգելայ ։
* Եւ հատցեն ընդ հիւսիսի ։ և անց 17
ցեն յաղբիւրն 'ի բեթսամիւս ։ * Եւ 18
պատեսցին առ գաղիլովթաւ ։ որ է
հանդէպ զառիվերին եդոմմինաւ ։ և
իջցեն 'ի վէմն բաան ։ որդւոյ ռուբէ
նի՝ և անցցեն 'ի թիկանց բեթարա-

‖ Ծննդ 28. 19.

բայ 'ի հիւսիսոյ ։ և իջցեն 'ի արաբայ ։
19 * Անտի անցցեն սահմանքն 'ի թիկանց
բեթագղայ ։ 'ի հիւսիսոյ ծովու ։ և
ելիցին ելք սահմանացն 'ի սար ծո-
վուն աղւոյ 'ի հիւսիսոյ ։ և յեզր յոր-
20 դանանու 'ի հարաւոյ ։* Յորդքիկ են
սահմանք նց 'ի հարաւոյ ։ և յորդանան
զատուցանէ 'ի կողմանէ արևելից ։
այս է ժառանգութիւն որդւոցն բենիա
մինի ։ և սահմանք նոցա շուրջանակի
21 ըստ տոհմից իւրեանց ։* Եւ եղեն քա
ղաքք ցեղի որդւոյն բենիամենի ըստ
տոհմից իւրեանց ։ երիքով ։ և բեթագ-
22 լա ։ և ամենգասիմ ։ * Եւ բեթարա-
23 բա ։ և սեմարիմ ։ և բեթէլ ։ * Եւ
24 աւիմ ։ և ափար՝ և արփա ։ * Եւ կա-
րէմ ։ և քափերամին ։ և գաբաա ։ քա-
ղաքք երկոտասան և աւանք նոցա ։
25 * Գաբաւոն՝ և ռամմա ։ և բերովթ ։
26 * Եւ մասփա ։ և կեփիրա ։ և ամուսա ։
27 * Եւ ռէկեմ ։ և յերփայէլ ։ և թարա-
28 ղա ։ * Եւ սելա ։ էլեփ ։ և յեբուս ։
այն է երուսաղէմ ։ և գաբաաթ ։ և
քաղաթնարեմ ։ քաղաքք չորեքտա-
սանք ։ և աւանք նոցա ։ Այս է ժա-
ռանգութիւն որդւոցն բենիամինի ըստ
տոհմից իւրեանց ։

## ԳԼ ։ ԺԹ ։

1 Եւ ել երկրորդ վիճակն շմաւոնի ։
ցեղի որդւոցն շմաւոնի ըստ տոհ-
մից իւրեանց ։ և եղև ժառանգութիւն
նոցա 'ի մէջ վիճակի որդւոցն յուդայ ։
2 * Եւ եղև վիճակ նոցա՝ բերսաբէէ՝
3 և սաբէէ՝ և մօլադա ։ * Եւ ասեր-
սուաղ ։ և բաղթուղ ։ և բովլա ։ և ասոմ ։
4 * Եւ էլթուլատ ։ և էրմա ։
5 * Եւ սիկելակ ։ և բեթամ ։ և մարքա-
6 բովթ ։ և ասերսուսիմ ։ * Եւ բեթ-
լաբաաթ՝ և ագարակք նոցա՝ քաղաքք
7 երկոտասան ։ և աւանք նոցա ։ * Ային ։
և ռեմօն՝ և եթեր ։ և ասան՝ քաղաքք
8 չորք՝ և աւանք նոցա ։ * Եւ ամենայն
ագարակք շուրջ զքաղաքօքն այնո-
քիւք ։ մինչև ցբաաղեթ ։ բէեր ։ ռա-
մօթ 'ի մուտս յամաթայ ընդ հարաւ ։
այս է ժառանգութիւն ցեղի որդւոցն
9 շմաւոնի ըստ տոհմից իւրեանց ։ * Ի
վիճակէն յուդայ ։ ժառանգութիւն ցե-
ղի որդւոցն շմաւոնի ։ քանզի եղև բա
ժին որդւոցն յուդայ մեծ քան զնո-
ցայն ։ և ժառանգեցին որդիքն շմաւո
10 նի 'ի մէջ վիճակի նոցա ։ * Եւ ել եր
րորդ վիճակն զաբուղոնի ։ ըստ տոհ-
մից իւրեանց ։ և եղեն սահմանք ժա
ռանգութեան նոցա մինչև ցսարդիթ ։
11 * Եւ ել սահման նց ծովու ։ և մարա-
ղա ։ և հասցէն ցդաբասթէ ։ և հանդի-
պես-

պեսցին ձորոյն՝ որ է հանդէպ յեկնա
մայ ։ *Եւ դարձցին 'ի սարիդա․ դէմ 12
յանդիման յարեւելից բեթսամեայ 'ի
սահմանս քասաղոթ թաբորայ ․ եւ
անցցեն 'ի դաբարաթ․ եւ ամբարձցին
առ յաբագային ։ *Եւ անտի պատի 13
ցին հանդէպ ընդ արեւելս ձգեալ 'ի
քաղաքն կատասիմ․ եւ անցցեն յռեմ
մօն․ յամաթարիմ․ աննուայ ։ *Եւ պա 14
տեսցին զսահմանօքն հիւսիսոյ ցեկնա
թօն․ եւ եղիցին ելք նոցա 'ի գայն՝ յեփ
թայիլ ։ *Եւ ընդ կատտամաթ․ եւ 15
ընդ նաաղոլ․ եւ ընդ սեմրոն․ եւ ընդ
յադելայ․ եւ ըստ բեթլահէմ․ քաղաքք
երկոտասան՝ եւ աւանք նոցա ։ *Այս 16
է ժառանգութիւն ցեղի որդւոյն զա_
բուղոնի ըստ տոհմից իւրեանց․ քա_
ղաքք նց եւ աւանք իւրեանց ։ *Եւ իսա 17
քարայ ել չորրորդ վիճակն․ որդւոցն
իսաքարու ըստ ազգականութեան իւր_
եանց ։ *Եւ եղեն սահմանք նոցա՝ 18
յեզրայել՝ եւ աքասելոթ․ եւ սունամ ։
*Եւ ափերեմ․ եւ սիան ։ 19
*Եւ ռամաթ․ եւ ենդանիմ․ եւ ռե_ 20
նաթ․ եւ անարեթ ։ *Եւ ռաբբոթ․ 21
եւ կեսիոն․ եւ այեմես ։ եւ ռէնաթ․ եւ
ենդադիս․ եւ ենդադդա․ եւ բեթփա_
սեմ ։ *Եւ կցեսցին սահմանքն 'ի թա 22
բովթ․ եւ 'ի կասիմ՝ ընդ ծովակողմն․
եւ 'ի բեթսամիւս․ եւ եղիցին ելք սահ
մանաց նց յորդանան․ քաղաքք վեշ
տասան եւ աւանք նոցա ։ *Այս է ժա 23
ռանգութիւն ցեղի որդւոցն իսաքարու
ըստ տոհմից իւրեանց․ քաղաքք եւ ա_
գարակք իւրեանց ։ *Եւ ել վիճակն 24
հինգերորդ ցեղի որդւոցն ասերայ ըստ
տոհմից իւրեանց ։ *Եւ եղեն սահ_ 25
մանք նոցա․ քեղկաթ՝ եւ ողի․ եւ բատ
նէ․ եւ աքսափ՝ եւ ալամելէք ։ *Եւ ա_ 26
մաթ․ եւ մասաղ․ եւ կցեսցի 'ի կարմել
ընդ ծովակողմն․ եւ սիոր․ եւ 'ի բադա
նայէ ։ *Եւ դարձցին յարեւելից կող_ 27
մանէ 'ի բեթդագօնայ ․ եւ կցեսցի 'ի
զաբուղոն․ եւ 'ի գայի ․ յեփթայելի
ընդ հիւսիսի ․ եւ մտցեն սահմանքն 'ի
սափաթայ բեթամեկ․ եւ գնասցեն ըստ
սահմանակիցս անայելի ․ եւ անցցեն 'ի
քաբուղ․ յահեկէ կողմանէ ։ *Եւ յաք_ 28
րան ․ եւ յռովբ ․ եւ յամմօն՝ եւ 'ի կա_
նայի մինչեւ 'ի սիդօն մեծ ։ *Եւ դարձ 29
ցին սահմանքն յռամայ, մինչեւ ցքա_
ղաք ամրոցին տիւրացւոց․ եւ դարձցին
սահմանքն 'ի սոսայ ․ եւ եղիցին ելք նր
ծովն․ եւ վիճակն ակզիփայ ։ *Եւ ամ 30
մա ․ եւ ափեկա՝ եւ ռաւոբա ․ քաղաքք
քսան եւ երկու ․ եւ աւանք նց ։ *Այս 31
է ժառանգութիւն ցեղի որդւոցն ասե
րայ ըստ տոհմից իւրեանց ․ քաղաքք
նէ

32 նոցա եւ աւանք իւրեանց ։ *Եւ նեփ
թաղիմայ ել վիճակն վեցերորդ․ որդ
ւոցն նեփթաղիմայ ըստ տոհմից իւր_
33 եանց ։ *Եւ եղեն սահմանք նոցա ․
մեղեփ․ եւ մայելոմ․ եւ բեսանայիմ ։
եւ արսէ ․ եւ նագեբ ․ եւ յաբնէլ․ մինչեւ
ցլակու՝ եւ եղեն ելք նց յորդանան ։
34 *Եւ դարձցին սահմանքն 'ի ծովն ա_
զանօթթաբովր ․ եւ անցցեն անտի 'ի
կօկ․ եւ կցեսցին 'ի հարաւոյ զաբուղո
նի ։ եւ ասերայ կցեսցին 'ի ծովակողմն
յուդայ․ եւ յորդանան յարեւելից կող_
35 մանէ ։ *Եւ քաղաքք պարսպաւորք
ասեդիմ․ տիւրոս ․ եւ ամաթ ․ եւ ռեկ_
36 կաթ ․ եւ քեներեթ ։ *Եւ ադամի ․ եւ
37 եւ ռամմա ․ եւ ասոր ։ *Եւ կադէս ․ եւ
38 եդրային ․ եւ ակնասոր ։ *Եւ յարօն ․
մակդաղիէլ․ ամօր ․ եւ բեթանաթ ․ եւ
թասմուս ․ քաղաքք իննեւ տասն՝ եւ
39 ագարակք նոցա ։ *Այս է ժառան_
գութիւն ցեղի որդւոցն նեփթաղիմայ․
ըստ տոհմից իւրեանց ․ քաղաքք եւ
40 աւանք նց ։ *Եւ ցեղի որդւոցն դա_
նայ ըստ տոհմից իւրեանց․ ել վիճակն
41 եօթներորդ ։ *Եւ եղեն սահմանք
ժառանգութեան նց սարաա եւ եսթաւ
42 ուղ ։ *Եւ սաղաբին ․ եւ յեթլա ․ եւ
43 թամնա ։ *Եւ ելթեկով եւ բաալօթ ։
44 *Եւ բանէ՝ բարակ․ եւ քաղաքք սա_
45 մես ․ եւ յաալօն ։ *Եւ ելօն ․ եւ ակկա_
46 րօն ․ գաբաթօն ։ *Եւ գեթրեմօն ․ եւ
'ի ծովէն բաղեից բակրօնա ․ սահման
47 մերձ յոպէ ։ *Եւ ել սահման որդ_
ւոցն դանայ ('ի նոցանէն ։ այս է ժա_
ռանգութիւն ցեղի որդւոցն դանայ՝ ըստ
տոհմից իւրեանց ․ քաղաքք եւ աւանք
նոցա ․ եւ ոչ ջնջեցին որդիքն դանայ
զամօրհացին զնեղիչս իւրեանց 'ի լե_
րինն ․ եւ ոչ թողուին զնոսա ամօրհա
ցիքն իջանել 'ի հովիտսն ․ եւ նեղէին
'ի նոցանէ զսահմանս բաժնի իւրեանց․)
եւ գնացին որդիքն դանայ եւ ետուն
պատերազմ ընդ լեսեմայ ․ եւ առին
զնա ․ եւ հարին զնա սրով սուսերի ․
եւ ժառանգեցին զնա․ եւ բնակեցան 'ի
նմա ․ եւ անուանեցին զլեսեմ, դան ․
48 ըստ անուան հօրն իւրեանց ։ *Այս է
ժառանգութիւն ցեղի որդւոցն դանայ
ըստ ազգականութեան իւրեանց ․ քա_
ղաքք այսոքիկ եւ ագարակք իւրեանց ։
49 *Եւ վախճանեցին ժառանգել զեր
կիրն ըստ սահմանաց իւրեանց ․ ( եւ
ամօրհացին տեւեաց բնակել յելոմ․ եւ
'ի սաղաբիմ ։ եւ ծանրացաւ ձեռն եփրե
մի 'ի վերայ նոցա ․ եւ եղեն նց 'ի հար
կատու ․ եւ գնացին նկատել զերկիրն
ըստ սահմանաց նոցա ․) եւ ետուն որ_
դիքն իղի ժառանգութիւն յեսուայ
Dd որդ-

Եւ հեբրէ․ [illegible] այս է [illegible] բեթշեմեշ

որդւոյ Նաւեայ 'ի մէջ իւրեանց: 50 *Հրամանաւ Տն̃ ետուն նմա զքաղաքն՝ զոր խնդրեաց զթամնաթսարա՝ որ է 'ի լերինն եփրեմայ. և շինեաց զքաղաքն՝ և բնակեցաւ 'ի նմա: 51 *Այս են բաժինք՝ զորս բաժանեաց եղիազար քահանայ. և յեսու նաւեան. և իշխանք նահապետութեանց ցեղիցն իէի վիճակօք՝ 'ի սելով առաջի Տն̃ առ դրան խորանին վկայութեան. և գնացին նկատել զերկիրն:

## Գլ: Ի:

1 Խօսեցաւ Տր̃ ընդ յեսուայ՝ և ասէ: խօսեաց ընդ որդիսն իէի, և ասասցես: 2 *‖Տուք զքաղաքս ապաստանացն զորոց խօսեցայ ընդ ձեզ 'ի ձեռն մովսէսի: 3 *Ապաստան սպանողի՝ որ սպանանէ զանձն ակամայ յանգէտս. և եղիցին ձեզ քաղաքք ապաստանի. և մի՛ մեռցի սպանօղն 'ի մերձաւորէ արեանն՝ մինչ կացցէ առաջի ժողովրդեանն յատենի: 4 *Եւ փախիցէ 'ի մի 'ի քաղաքացն այնոցիկ. և կացցէ 'ի մուտս դրան քաղաքին. և խօսեսցի յականջս ծերոց քաղաքին այնորիկ զբանս իւր. և ժողովեսցեն զնա ժողովուրդն առ ինքեանս. և տացեն նմա տեղի. և բնակեսցի ընդ նոսա: 5 *Եւ եթէ երթիցէ մերձաւոր արեանն զհետ նորա. մի՛ մատնեսցեն զսպանօղն 'ի ձեռս նորա. քանզի յանգէտս եհար զընկերն իւր. և ոչ ատեայր զնա յերեկն և յեռանդ: 6 *Եւ բնակեսցի 'ի քաղաքին յայնմիկ մինչև կացցէ առաջի ժողովրդեանն յատենի՝ մինչև մեռանիցի քահանայն մեծ՝ որ իցէ յաւուրսն յայնոսիկ. և ապա դարձցի սպանօղն՝ և եկեսցէ 'ի տեղի իւր՝ և 'ի տուն իւր. և 'ի քաղաքն ուստի փախեաւ: 7 *Եւ զատուցին զկադէս 'ի գալիլեայ՝ 'ի լերինն նեփթաղիմայ. և զսիւքեմ 'ի լերինն եփրեմայ. և զքաղաքն արբոկ՝ այն է քեբրոն 'ի լերինն յուդայ: 8 *Եւ յայնկոյս յորդանանու յարևելից երիքովի. ‖ետուն զբոսոր յանապատին 'ի դաշտի, 'ի ցեղէն ռուբենի. և զռամօթ 'ի գաղաադ 'ի ցեղէն գադայ. և զգօղզան 'ի բասանաստան 'ի ցեղէն մանասէի: 9 *Այսոքիկ են քաղաքք հռչակաւորք ամենայն որդւոցն իսրայելի. և եկին յեցելոյ 'ի նոսա. փախչել անդր ամենայնի՝ որ հարկանիցէ զանձն ակամայ՝ զի մի՛ մեռանիցի 'ի ձեռաց մերձաւորի արեանն՝ մինչև կացցէ առաջի ժողովրդեանն յատենի:

‖Թուոց 35.10. 2.Օրէ. 19.2.

‖2.Օրէ 4.43.

## Գլ: ԻԱ:

1 Եւ մատեան նահապետք որդւոցն ղևեայ առ եղիազար քահանայ. և առ յեսու նաւեան. և առ նահապետս տոհմի ցեղից որդւոցն իէի: 2 *Եւ խօսեցան ընդ նս 'ի սելով յերկրին քանանացւոց՝ և ասեն. ‖Հրաման ետ Տր̃ 'ի ձեռն մովսէսի՝ տալ մեզ քաղաքս բնակելոյ՝ և զանդաստանս նց անասնոց մերոց: 3 *Եւ ետուն որդիքն իէի ղևտացւոցն 'ի ժառանգութենէն հրամանաւ Տն̃ զքաղաքսն զայնոսիկ՝ և զանդաստանս նց: 4 *Եւ ել վիճակ տոհմին կահաթու. և եղեն որդւոցն ահարոնի քահանայիցն ղևտացւոց, 'ի ցեղէն յուդայ, և 'ի ցեղէն շմաւոնի, և 'ի ցեղէն բենիամենի վիճակաւ՝ քաղաքք երեքտասանք: 5 *Եւ այլոց որդւոցն կահաթու մնացելոց՝ յազգականութէ ցեղին եփրեմայ. և 'ի ցեղէն դանայ. և 'ի կիսոյ ցեղին մանասէի վիճակաւ՝ քաղաքք տասն: 6 *Եւ որդւոցն գեթսօնի յազգականութէ ցեղին իսաքարայ. և 'ի ցեղէն ասերայ. և 'ի ցեղէն նեփթաղիմայ. և 'ի կիսոյ ցեղին մանասէի 'ի բասան վիճակաւ՝ քաղաքք երեքտասան: 7 *Եւ որդւոցն մերարեայ, ըստ տոհմից իւրեանց, 'ի ցեղէն ռուբենի. և 'ի ցեղէն գադայ. և 'ի ցեղէն զաբուղոնի վիճակաւ՝ քաղաքք երկոտասան: 8 *Եւ ետուն որդիքն իէի ղևտացւոցն զքաղաքսն զայնոսիկ՝ և զանդաստանս նոցա՝ զորօրինակ պատուիրեաց Տր̃ մովսէսի վիճակաւ: 9 *Եւ ետ ցեղ որդւոցն յուդայ. և ցեղ որդւոցն շմաւոնի. և ցեղ որդւոցն բենիամենի զքաղաքսն զայնոսիկ ‖ և կոչեցան յանուանէ: 10 *Եւ այգ որդւոցն ահարոնի. 'ի տոհմէ կահաթու որդւոցն ղևեայ. զի նց եղ նախ վիճակն: 11 *Եւ ետուն նոցա զկարիաթ արբոկ զմայր քաղաքացն ենակայ. այն է քեբրոն 'ի լեառն յուդայ. և զանդաստանսն շուրջ զնովաւ: 12 *‖Եւ զագարակս նորա. և զաւանս նր՝ զոր ետ յեսու քաղեբայ որդւոյ յեփոնեայ 'ի կալուած: 13 *Եւ որդւոցն ահարոնի քահանայի ետուն քաղաքս ապաստանի սպանողի. զքեբրոն՝ և զգաւառցեալսն 'ի նա. և զղեբնայ. և զգաւառցեալսն 'ի նա: 14 *Եւ զյեսթեր. և զգաւառցեալսն 'ի նա. և զյեթեմով՝ և զգաւառցեալսն 'ի նա: 15 *Եւ զաղօն. և զգաւառցեալսն 'ի նա. և զդաբիր. և զգաւառցեալսն 'ի նա: 16 *Եւ զային. և զգաւառցեալսն 'ի նա. և զյետտայ՝ և զգաւառցեալսն 'ի նա. և զբեթսամիւ՝

‖Թուոց 35.2.

‖1.Մն 6.2.

‖Յեսու 14.14

‖1.Մն 6.56.

մուս՝ և զզատուցեալսն ՚ի նա. քաղաքք ինն. յերկուց ցեղիցն այնոցիկ: 17 *Եւ ՚ի ցեղէն բենիամենի. զգաբաւոն՝ և զզատուցեալսն ՚ի նա: 18 *Եւ զանաթովթ՝ և զզատուցեալսն ՚ի նա. և զսաղմօն՝ և զզատուցեալսն ՚ի նա. և զգաբէէ՝ և զզատուցեալսն ՚ի նա. քաղաքք չորք: 19 *Ամենայն քաղաքք որդւոցն ահարոնի քահանայից. քաղաքք երեքտասանք. և անդաստանք նոցա: 20 *Եւ տոհմից որդւոցն կահաթու ղետացւոցն՝ մնացելոց յորդւոցն կահաթու. և եղեն քաղաքք սահմանաց նց: 21 *Ի ցեղէն եփրեմայ: և ետուն նոցա քաղաք ապաստանի սպանողի զսիւքեմ. և զզատուցեալսն ՚ի նա՝ ՚ի լերինն եփրեմայ. և զգազեր՝ և զզատուցեալսն ՚ի նմա: 22 *Եւ զկաբսեմ. և զզատուցեալսն ՚ի նա. և զվերին բեթորոն՝ և զզատուցեալսն ՚ի նա. քաղաքք չորք: 23 *Ի ցեղէն դանայ. զելթեկով. և զզատուցեալսն ՚ի նա. և զգեբեթօն՝ և զզատուցեալսն ՚ի նա: 24 *Եւ զյաղօն և զզատուցեալսն ՚ի նա. և զգեդրեմօն՝ և զզատուցեալսն ՚ի նա. քաղաքք չորք: 25 *Եւ կիսոյ ցեղին մանասէի. զթանաք. և զզատուցեալսն ՚ի նա. և զբեթսան. և զզատուցեալսն ՚ի նա՝ քաղաքս երկուս: 26 *Ընդ ամենայն՝ քաղաքս տասն. և զզատուցեալսն ՚ի նոսա. տոհմի որդւոցն կահաթու, մնացելոց: 27 *Եւ որդւոցն գերսոնայ. ազգականացն ղետացւոց ՚ի կիսոյ ցեղէն մանասէի. քաղաքս զզատուցեալս սպանողաց. զգօղան, ՚ի բասանատանի. և զզատուցեալսն ՚ի նա. և զբեեստարայ. և զզատուցեալսն ՚ի նա. քաղաքս երկուս: 28 *Եւ ՚ի ցեղէն իսաքարայ. զկեսիոն. և զզատուցեալսն ՚ի նա. և զդաբրաթ. և զզատուցեալսն ՚ի նա: 29 *Եւ զերիմովթ. և զզատուցեալսն ՚ի նա. և զաղբիւրն նամակայ՝ և զզատուցելսն ՚ի նա՝ քաղաքս չորս: 30 *Եւ ՚ի ցեղէն ասերայ զմասաաղ. և զզատուցեալսն ՚ի նա. և զաբդօն. և զզատուցեալսն ՚ի նա: 31 *Եւ զքեղկաթ. և զզատուցեալսն ՚ի նա. և զռովբ. և զզատուցեալսն ՚ի նա. քաղաքս չորս: 32 *Եւ ՚ի ցեղէն նեփթաղիմայ քաղաքս զատուցեալս սպանողի. զկադէս ՚ի գալիլեայ. և զատուցեալսն ՚ի նա: զեմաթդովր. և զատուցեալսն ՚ի նա: և զնոյեմօն. և զատուցեալսն ՚ի նա: քաղաքս երիս: 33 *Ընդ ամ՝ քաղաքս գերսոնի ըստ տոհմից իւրեանց քաղաքս երեքտասան. և զատուցեալք նոցին: 34 *Եւ տոհմի որդւոցն մերարեայ այլոցն ղեւտացւոց ՚ի ցեղէ որդւոյն զաբուղոնի. զյեկնամ. և զանդաստանս նորա. զկարթա, և զանդաստանս նր: 35 *Զդեմնայ. և զանդաստանս նորա: զնաաղօլ. և զանդաստանս նորա. քաղաքս չորս: 36 *Եւ յայնկոյս յորդանանու ՚ի հանդիպէ երիքովի. ՚ի ցեղէն ռուբենի քաղաքս ապաստանի սպանողի. զբոսոր՝ յանապատին միսորայ. և զանդաստանս նորա: և զյաղեր՝ և զանդաստանս նորա: 37 *Զկեդսոն. և զանդաստանս նորա: զմափայ՝ և զանդաստանս նորա. քաղաքս չորս: 38 *Եւ ՚ի ցեղէն դադայ՝ քաղաքս ապաստանի սպանողի զռամօթ ՚ի գաղաադ՝ և զանդաստանս նր: զմանայեմ՝ և զանդաստանս նորա: 39 *Զեսեբօն՝ և զանդաստանս նորա: և զյազեր՝ և զանդաստանս նորա: 40 *Ընդ ամ. քաղաքս չորս. ամենայն քաղաքք որդւոցն մերարեայ ըստ տոհմից իւրեանց մնացելոց ՚ի ցեղէն ղեւեայ. և եղեն սահմանք նոցա քաղաքք երկոտասանք: 41 *Ընդ ամ. քաղաքք ղեւտացւոյն ՚ի մէջ կալուածոց որդւոցն իղի քառասուն և ութ քաղաքք՝ և անդաստանք նոցա շուրջ զքաղաքօքն այնոքիւք: 42 *Քաղաքք և անդաստանք շուրջ ըզ քաղաքաւն. նոյնպէս ամենեցունց քաղաքացն այնոցիկ. (և վախճանեաց յեսու բաժանել զերկիրն սահմանօք իւրօք. և ետուն որդիքն իղի բաժին յեսուայ ըստ հրամանի Տն ետուն նմա զքաղաքն՝ զոր խնդրեաց՝ զթամնասաքար ՚ի լերինն եփրեմայ. և շինեաց յեսու զքաղաքն՝ և բնակեցաւ ՚ի նմա. և էառ յեսու զսուրն քարեղէն որով թլփատեաց զորդիսն իղի. զելեալս ՚ի ճանապարհի անապատին. քանզի ոչ թլփատեցան յանապատի անդ. և եդ զնոսա ՚ի թամնասաքար:) 43 *Եւ ետ Տր իղի զամենայն երկիրն՝ զոր երդուաւ տալ հարցն նոցա. և ժառանգեցին զնա՝ և բնակեցան ՚ի նմա: 44 *Եւ հանգոյց զնոսա Տր շուրջ ջանակի՝ որպէս երդուաւ հարցն նց՝ և ոչ ոք յարեաւ ընդդէմ նց ՚ի թշնամեաց իւրեանց. զի զամենայն թշնամիս նոցա մատնեաց Տր ՚ի ձեռս նոցա: 45 *Եւ ոչ սխալեցաւ բան մի յամենայն բանից բարեաց՝ զոր խօսեցաւ Տր որդւոցն իսրայելի. այլ ամ ինչ եղև:

## ԳԼ: ԻԲ:

1 Յայնժամ կոչեաց յեսու զորդիսն ռուբենի. և զորդիսն գադայ. և 2 զկէս ցեղին մանասէի *Եւ ասէ ցնս: դուք ձեզէն լուայք զամ ինչ զոր



պատ_

պատուիրեաց ձեզ Մովսէս ծառայ Տ՟ն. և ունկնդիր եղէք բարբառոյ իմոյ ա՟մ ա՟մի զոր պատուիրեցի ձեզ։ *3 Եւ ոչ թողէք զեղբարս ձեր զայնչափ աւուրս. և աւելի մինչև ցայսօր ժամանակի, պահեցէք զպատուիրանս Տ՟ն Ա՟յ ձերոյ։ *4 Եւ արդ հանգոյց Տէր Ա՟ծ մեր զեղբարս ձեր՝ ո՟պ ասաց ն՟ց. բայց արդ դարձեալ երթայք՝ ՚ի տունս ձեր. և յերկիր կալուածոց ձերոց՝ զոր ետ ձեզ Մովսէս ծառայ Տ՟ն յայնկոյս Յորդանանու։ *5 Այլ զգոյշ լինիջիք յոյժ՝ առնելոյ զպատուիրանն՝ և զօրէնս՝ զորս պատուիրեաց մեզ Մովսէս ծառայ Տ՟ն. սիրել զՏ՟ր Ա՟ծ մեր՝ և գնալ յա՟մ ճանապարհս ն՟ր՝ պահել զպատուիրանս նորա. և յարել ՚ի նա. և պաշտել զնա յա՟մ սրտէ ձերմէ՝ և յա՟մ անձնէ ձերմէ։ *6 Եւ օրհնեաց զնոսա յեսու՝ և արձակեաց զնոսա՝ և գնացին ՚ի տունս իւրեանց։ *7 Եւ կիսոյ ցեղին մանասէի ետ Մովսէս ՚ի բաշանաստան. և կիսոյն ետ յեսու ընդ եղբարս նոցա առ ծովեզերբն. և յորժամ արձակեաց զն՟ս յեսու ՚ի տունս իւրեանց՝ օրհնեաց զնոսա։ *8 Եւ խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ. ընչիւք բազմօք երթիցեն ՚ի տունս իւրեանց. և անասուն բազում յոյժ. և արծաթ՝ և ոսկի՝ և պղինձ՝ և երկաթ. և հանդերձ բազում յոյժ. բաժանեցին աւար ՚ի թշնամեաց ընդ եղբարս իւրեանց։ *9 Եւ դարձան, և գնացին որդիքն ռուբենի. և որդիքն գադայ. և կէս ցեղին մանասէի յորդւոցն Ի՟ղի. ՚ի սելովայ՝ յերկրէն քանանացւոց. երթալ յերկիրն գաղաադու. յերկիր կալուածոց իւրեանց. զոր ժառանգեցին հրամանաւ Տ՟ն ՚ի ձեռն Մովսէսի։ *10 Եւ եկին ՚ի գալիլովթ յորդանանու. որ է յերկրին քանանու՝ և շինեցին որդիքն ռուբենի. և որդիք գադայ. և կէս ցեղին մանասէի սեղան առ եզերբ յորդանանու. սեղան մեծ տեսանելով։ *11 Եւ լուան որդիքն իսրայէլի՝ և ասեն. եթէ ահա շինեցին որդիքն ռուբենի՝ և որդիքն գադայ. և կէս ցեղին մանասէի սեղան ՚ի սահմանս երկրին քանանացւոց ՚ի գալիլովթ յորդանանու յայնկոյս որդւոցն Ի՟ղի։ *12 Եւ լուան որդիքն Ի՟ղի. և ժողովեցան որդիքն իսրայէլի ՚ի սելով. ելանել տալ ընդ ն՟ց պատերազմ։ *13 Եւ առաքեցին որդիքն Ի՟ղի առ որդիսն ռուբենի՝ և առ որդիսն գադայ. և առ կէս ցեղին մանասէի ՚ի գաղաադ զփենեէս զորդի եղիազարու որդւոյ ահարօնի քահանայի։ *14 Եւ տասն այր յիշխանացն ը՟ նմա. մի մի իշխան ՚ի նահապետացն. յա՟մ ցեղիցն իսրայէլի. իշխանք տանց նահապետաց էին հազարապետք Ի՟ղի։ *15 Եւ եկին առ որդիսն ռուբենի. և առ որդիսն գադայ. և առ կէս ցեղին մանասէի. խօսեցան ընդ ն՟ց՝ և ասեն. *16 Այսպէս ասէ ա՟մ ժողովուրդն Տ՟ն. զինչ են յանցանքդ այդոքիկ՝ զորս յանցեայք առաջի Տ՟ն Ա՟յ Ի՟ղի. դառնալ յետս ՚ի Տ՟է. շինել ձեզ սեղան. և լինել ձեզ ապստամբ ՚ի Տ՟է Ա՟յ մերմէ։ *17 Մի թէ փոքր իցեն մեզ մեղքն փեգովրայ. զի ոչ եմք սրբեալք ՚ի նմանէ մինչև ցայսօր՝ և եղեն հարուածք ՚ի վ՟ր ժողովրդեանն Տ՟ն։ *18 Եւ դուք դարձայք այսօր ՚ի Տ՟է։ և եղիցի թէ ապստամբիցիք այսօր ՚ի Տ՟է. և լինիցի վաղիւն բարկութի ՚ի վերայ ա՟մ Ի՟ղի. *19 Եւ արդ՝ եթէ փոքր իցէ ձեզ երկիր կալուածոց ձերոց, անցէք յերկիր կալուածոց Տ՟ն. և ժառանգեցէք ՚ի մէջի մերում. և մի՛ լինիք ապստամբք ՚ի Տ՟է. և մի՛ ՚ի մէնջ ապստամբէք. վասն շինելոյ ձերոյ սեղան արտաքոյ քան զսեղան Տ՟ն Ա՟յ մերոյ։ *20 Ոչ ապաքէն աքար զարայեան յանցեաւ յանցանս ՚ի նզովից անտի. և ՚ի վ՟ր ա՟մ ժողովրդեանն Ի՟ղի եղև բարկութի. և նա միայն էր. մի թէ ինքն միայն մեռաւ յիւրում ՚ի մեղսն։ *21 Պատասխանի ետուն որդիքն ռուբենի՝ և որդիքն գադայ՝ և կէս ցեղին մանասէի. խօսեցան ընդ հազարապետսն՝ և ասեն. *22 Ա՟ծ Ա՟ծ է Տ՟ր։ և Ա՟ծ Ա՟ծ ինքնին գիտէ։ և Ի՟էլ ինքնին գիտասցէ. եթէ վասն ապստամբութե՟ իցէ յանցեաք առաջի Տ՟ն, մի՛ ապրեցուսցէ զմեզ յաւուրս յայսմիկ։ *23 Եւ եթէ շինեցաք մեզ սեղան ապստամբելոյ ՚ի Տ՟է մերմէ, հանել ՚ի վ՟ր նորա զոհ ողջակիզաց. կամ եթէ առնել ՚ի վ՟ր ն՟ր զոհ փրկութե՟ Տէր ինքնին խնդրեսցէ։ *24 Այլ վասն երկիւղի արարաք զայս ասեմք՝ դուցէ խօսեսցին որդիքն ձեր ընդ որդիս մեր, և ասիցեն՝ թէ զի՞ կայ ձեր և Տ՟ն Ա՟յ Ի՟ղի։ *25 Եւ սահման եդ Տէր՝ ընդ մեզ և ընդ ձեզ որդիք ռուբենի և գադայ՝ զյորդանան. և չիք ձեզ բաժին ՚ի Տ՟է. և օտարացուցանիցեն որդիք ձեր զորդիսն մեր՝ զի մի՛ պաշտիցեն զՏէր։ *26 Եւ ասացաք առնել այսպէս։ շինել զսեղանս զայս. ոչ վ՟ն ողջակիզաց՝ և ոչ վասն զոհից։ *27 Այլ զի իցէ սա ՚ի վկայութի ընդ մեզ և ընդ ձեզ. և ընդ որդիս մեր յետ մեր. պաշտել զպաշտօն Տ՟ն առաջի ն՟ր. ընծայիւք մերովք՝ և պատարագօք մերովք՝ և զոհիւք փրկութեա՟ց մերոց։

Թուոց 32.33. Օրին. 13.8.

տեսլ. եամբ

Թուոց 25.3. 2. Օրին. 4.3.

Յես. 7.1.

մերոյ։ Եւ ոչ ասասցեն որդիք ձեր ցոր-
դիս մեր 'ի վաղիւ, թէ ոչ գոյ ձեր բա-
ժին 'ի Տէ։ *Եւ ասացաք՝ թէ լինիցի 28
երբեք՝ եւ խօսիցին ընդ մեզ՝ կամ ընդ
ազգս մեր 'ի վաղիւ. եւ ասիցեն. թէ
տեսէք զնմանութիւն սեղանոյ Տն զոր
արարին հարքն մեր. ոչ վն ողջակի-
զաց՝ եւ ոչ վասն զոհից. այլ վկայութի
ընդ մեզ եւ ընդ ձեզ՝ եւ 'ի մէջ որդւոց
մերոց։ *Քաւ լիցի մեզ ապստամ- 29
բել 'ի Տէ այսօր. առ 'ի չինելոյ մեզ
զսեղան զոհից, կամ ողջակիզաց. կամ
զոհից փրկութե. արտաքոյ քան զսե-
ղան Տն Այ մերոյ՝ որ է առաջի խո-
րանի նր։ *Եւ իբրեւ լուաւ փենեէս 30
քահանայ. եւ ամ իշխանք ժողովր-
դեանն՝ եւ հազարապետքն իէի որք
էին ընդ նմա զբանսն՝ զորս խօսեցան
որդիքն ռուբենի եւ որդիքն գադայ եւ
կէս ցեղին մանասէի, հաճոյ թուէ-
ցաւ նոցա։ *Եւ ասէ փենեէս որդի 31
եղիազարու քահանայ Տն ցորդիսն
ռուբենի՝ եւ ցորդիսն գադայ՝ եւ ցկէս
ցեղին մանասէի. այսօր գիտացաք թէ
ընդ մեզ է Տր. զի ոչ յանցեայք առա-
ջի Տն զյանցութիւն զայդ. եւ զի ապրե-
ցուցիք զորդիսն իսրայէլի 'ի ձեռաց
Տն։ *Եւ դարձան փենեէս քահա- 32
նայ որդի եղիազարու՝ եւ իշխանք տոհ-
միցն՝ յորդւոցն ռուբենի եւ յորդւոցն
գադայ եւ 'ի կիսոյ ցեղէն մանասէի
յերկրէն գաղաադու՝ յերկիրն քանա-
նու առ որդիսն իսրայէլի. եւ ետուն նց
զպատգամսն։ *Եւ հաճոյ թուեցաւ 33
բանն որդւոցն իէի. եւ օրհնեցին զԱծ
որդւոցն իսրայէլի. եւ խօսեցան ընդ
որդիսն իսրայէլի՝ եւ ասեն. մի եւս ելա-
նել ընդ նոսա 'ի պատերազմ սատա-
կել զերկիր որդւոցն ռուբենի եւ որդ-
ւոցն գադայ եւ կիսոյ ցեղին մանասէի.
եւ բնակեցան 'ի նմա։ *Եւ անուա- 34
նեաց յեսու զսեղանն ռուբենի եւ ըզ
գադայ եւ զկէս ցեղին մանասէի՝ եւ
ասէ. զի վկայութի է 'ի մէջ նոցա.
եթէ Տր Ած է նոցա։

## ԳԼ։ ԻԳ։

Եւ եղեւ յետ աւուրց բազմաց. յետ 1
հանգուցանելոյ Տն զիսրայէլ
յամ թշնամեաց նց շուրջանակի. եւ
յեսու ծերացեալ եւ անցեալ զաւ-
ուրբք։ *Կոչեաց յեսու միանգամայն 2
զամ որդիսն իէի. եւ զծերակոյտս նց.
եւ զիշխանս նոցա. եւ զդատաւորս նց.
եւ զդպիրս նոցա. եւ ասէ ցնոսա. Ես
ծերացայ՝ եւ անցի զաւուրբք։ *Եւ 3
դուք ձեզէն տեսէք զամ, զոր արար
Տր Ած մեր ընդ ամ ազգսն՝ զորս ե-
բարձ յերեսաց ձերոց. զի Տր Ած ինք-
4 նին տայր պատերազմ ընդ ձեր։ *Եւ
արդ տեսէք՝ զի թողի ձեզ զազգսն
զմնացեալսն զայնոսիկ 'ի ժառանգու-
թի ըստ ցեղից ձերոց. 'ի յորդանանէ
զամ ազգսն՝ զորս սատակեցին 'ի ծո-
վէն մեծէ՝ որ զատուցանէ 'ի մուտսն
5 արեւու։ *Արդ՝ Տր Ած մեր նա սա-
տակեսցէ զնս յերեսաց ձերոց, մինչեւ
կորիցեն. եւ արձակեսցէ 'ի վերայ նց
զգազանս վայրենիս՝ մինչեւ սատա-
կեսցէ զնս. եւ զթագաւորս նոցա յե-
րեսաց ձերոց. եւ ժառանգեսջիք զեր-
կիր նց՝ ոպ խօսեցաւ Տր Ած մեր ընդ
6 մեզ։ *Արդ՝ զօրացարուք՝ յոյժ զգու-
շանալ եւ առնել զամ գրեալս 'ի գիրս
օրինացն մովսէսի. զի մի խոտորիցէք
7 'ի նմանէ յաջ, կամ յահեակ։ *Գու-
ցէ մտանիցէք յազգսն մնացեալս յայ
նոսիկ. եւ անուանք դից նց մի անուա
նիցին 'ի միջի ձերում. մի երդնուցուք
'ի նոսա. եւ մի պաշտիցէք զնոսա. եւ մի
8 երկիր պագանիցէք նց։ *Այլ զհետ
Տն Այ մերոյ երթիջիք՝ ոպ արարիք
9 մինչեւ ցայսօր։ *Եւ սատակեաց զնս
Տր յերեսաց ձերոց. զազգս մեծա-
մեծս եւ զհզօրս. եւ ոչ ոք եկաց ընդ-
10 դէմ ձեր մինչեւ ցայսօր։ *Մի 'ի ձէնջ
հալածէր զհազարս. զի Տր Ած ինք-
նին տայր պատերազմ՝ ընդ ձեր՝ ոպ
11 խօսեցաւ ընդ ձեզ։ *Զգոյշ լինիջիք
յոյժ անձանց ձերոց. սիրել զՏր Ած
12 ձեր։ *‖Ապա թէ դառնալով դառ- ‖ Ելից. 34. 16.
նայցէք. եւ յաւելցիք յազգսն մնացեալս
'ի ձէնջ. եւ խնամութիւս առնիցէք ը
նոսա. եւ խառնակիցիք դուք ընդ նս.
13 եւ նոքա ընդ ձեզ։ *Գիտելով գիտաս-
ջիք՝ զի ոչ եւս յաւելցի Տր սատակել
զազգսն զայնոսիկ յերեսաց ձերոց։ Եւ
լինիցին ձեզ յորոգայթս եւ 'ի գայ-
թագղութիս. խոչ 'ի գարշապարս ձեր՝
եւ նետք յաչս ձեր. մինչեւ կորնչիցիք
յերկրէս բարութե զոր ետ ձեզ Տր
14 Ած ձեր։ *‖Եւ ես՝ ահա երթամ ‖ 3. Թագ. 2. 2.
այսօր զճանապարհ ոպ ամենեքին՝ որք
են յերկրի։ Եւ ծանիջիք յամ սրտէ
ձերմէ՝ եւ յամ անձնէ ձերմէ. զի ոչ
վրիպեաց բան մի յամ բանից՝ զոր
խօսեցաւ Տր Ած ձեր. այլ ամ ինչ
եկն եհաս ձեզ. եւ ոչ սխալեցաւ 'ի նո-
15 ցանէ բան մի։ *Եւ եղիցի՝ զորօրի-
նակ եկին 'ի վր ձեր ամ բանք բա-
րիք՝ զոր խօսեցաւ Տր վն ձեր. նոյնպ
ածցէ Տր 'ի վր ձեր զամ բանս չարս.
մինչեւ սատակեսցէ զձեզ յերկրէս բա-
րութե զոր ետ ձեզ Տր Ած ձեր։
16 *Յանցանել ձեզ զուխտիւն Տն Այ
ձերոյ՝ զոր պատուիրեաց ձեզ՝ եւ եր-

թալ

թալ պաշտել զաստուածս օտարս՝ և երկիր պագանել նց. և բարկանայցէ ձեզ Տէր՝ և կորնչիջիք վաղվաղակի յերկրէս բարութեն զոր ետ ձեզ Տր։

## ԳԼ: ԻԴ։

1 Եւ ժողովեաց յեսու զա̃մ ցեղսն իսրայէլի 'ի սելով. և կոչեաց զա̃մ ծերսն իսրայէլի՝ և զիշխանս նոցա. և զդպիրս նոցա. և զդատաւորս նոցա. և կացին առաջի Այ։ 2 *Եւ խօսեցաւ յեսու ընդ ա̃մ ժողովրդեանն՝ և ասէ. այսպէս ասէ Տր Ա̃ծ իսրայէլի. յայն կոյս գետոյն պանդխտեցան հարքն ձեր յառաջագոյն. ‖թարա հայր աբրահամու՝ և հայր նաքովրայ. և պաշտեցին զաստուածս օտարս։ 3 *‖Եւ առի ես զհայր ձեր զաբրահամ յայնմ կողմանէ գետոյն. և առաջնորդեցի նմա յա̃մ երկրին քանանացւոց. և բազմացուցի զզաւակ նր։ 4 *‖Եւ ետու նմա զիսահակ. ‖և ետու իսահակայ զյակոբ, և զեսաւ. ‖և ետու եսաւայ ըզլեառն սէիր 'ի ժառանգութի. ‖և յակոբ և որդիք նր իջին յեգիպտոս. և եղեն անդ յազգ մեծ և 'ի բազում և հզօր. և չարչարեցին զնոսա եգիպտացիքն։ 5 *‖Եւ հարի զեգիպտացիսն նշանօք և արուեստիւք՝ զոր արարի 'ի նոսա։ 6 *‖Եւ ապա հանի զձեզ յեգիպտոսէ. և մտէք 'ի ծովն. ‖և պնդեցան եգիպտացիքն զհետ հարցն ձերոց կառօք և երիվարօք 'ի ծովն կարմիր։ 7 *Եւ աղաղակեցաք առ Տէր. և եդ զամպն և զմէգ 'ի մէջ մեր և 'ի մէջ եգիպտացւոցն. և էած 'ի վե̃ր նց զծովն և ծածկեաց զնոսա. և տեսին աչք մեր՝ զոր արար Տր ընդ երկիրն եգիպտացւոց. և էիք յանապատի անդ զաւուրս բազումս։ 8 *Եւ էած զձեզ յերկիրն ամորհացւոց բնակելոց յայնկոյս յորդանանու. ‖և եղեն ընդ ձեզ պատերազմ. և մատնեաց զնոսա Տր 'ի ձեռս ձեր. և ժառանգեցիք զերկիրն նոցա. և սատակեցիք զնս յերեսաց ձերոց։ 9 *Եւ յարեաւ բաղակ սեպփորայ արքայ մովաբու՝ և ետ պատերազմ ընդ իէլի. ‖և առաքեաց կոչեաց զբաղաամ՝ որդի բէովրայ նզովել զձեզ։ 10 *Եւ ոչ կամեցաւ Տր Ա̃ծ քո կորուսանել. և օրհնելով օրհնեաց զձեզ. և ապրեցոյց զձեզ 'ի ձեռաց նց. և մատնեաց զնոսա 'ի ձեռս ձեր։ 11 *‖Եւ անցէք ընդ յորդանան. և եկիք յերիքով. և պատերազմեցան ընդ ձեզ բնակիչք երիքովի. ամորհացին՝ և քանանացին. և փերեզացին. և խեւացին. և յեբուսացին. և քետացին. և գերգեսացին. և մատնեաց զնոսա 'ի ձեռս մեր։ 12 *‖Եւ առաքեաց յառաջագոյն քան զմեզ զձիաստացն. և մերժեաց զնոսա յերեսաց ձերոց. զերկոտասան թագաւորս ամորհացւոց. ոչ սրով քով և ոչ աղեղամբ քով։ 13 *Եւ ետ ձեզ Տր զերկիրս՝ յորում ոչ վաստակեցիք. և բնակեցայք 'ի քաղաքս՝ զորս ոչ շինեցիք. և յայգիս և 'ի ձիթենիս՝ զորս ոչ տնկեցիք դուք՝ և ուտէք։ 14 *‖Եւ արդ՝ երկերո̃ւք դուք 'ի Տէ. և պաշտեցէք զնա ուղղութբ. և արդարութբ. և 'ի բաց արարէք զաստուածս օտարոտիս՝ զորս պաշտեցին հարք ձեր յայնկոյս գետոյն՝ և յեգիպտոս. և պաշտեցէք զՏր։

15 *Ապա թէ ոչ իցէ ձեզ հաճոյ պաշտել զՏր. ընտրեցէք այսօր թէ զո՛ պաշտիցէք. զաստուածս հարցն ձերոց՝ որք յայնկոյս գետոյն էին, թէ զաստուածս ամորհացւոցն, յորոց դուք բնակեալ էք յերկրի նց. այլ ես՝ և տուն իմ պաշտեմք զՏր՝ զի սուրբ է։

16 *Պատասխանի ետուն ժողովուրդն՝ և ասեն. քաւ լիցի մեզ թողուլ զՏր Ա̃ծ մեր՝ և պաշտել զաստուածս օտարս։

17 *Զի Տր Ա̃ծ մեր. նա եհան զմեզ՝ և զհարս մեր յերկրէն եգիպտացւոց 'ի տանէ ծառայութեան. և արար մեզ զնշանս մեծամեծս զայնոսիկ. և պահեաց զմեզ յա̃մ ճանապարհին՝ յորում գնացաք. և յա̃մ ազգս՝ ընդ որս անցաք։ 18 *Եւ մերժեաց Տր զամորհացին՝ և զա̃մ ազգս բնակեալս յերկրին՝ յերեսաց մերոց. այլ և մեք պաշտեսցուք զՏր. զի նա է Ա̃ծ մեր։ 19 *Եւ ասէ յեսու ցժողովուրդն. ոչ կարէք դուք պաշտել զՏր՝ զի սուրբ է. և նա նախանձեալ ոչ ներիցէ մեղաց և անօրէնութեց ձերոց։ 20 *Յորժամ թողուցուք զՏր. և պաշտիցէք զաստուածս օտարս. և հասեալ 'ի վերայ՝ չարչարիցէ զձեզ՝ և ծախեսցէ զձեզ փոխանակ բարեացն՝ զորս արար ձեզ։ 21 *Եւ ասէ ժողովուրդն ցյեսու՝ ոչ այդպէս. 22 այլ զՏր պաշտեսցուք։ *Եւ ասէ յեսու ցժողովուրդն. ‖ահա դուք ձեզէն եղերուք վկայք անձանց ձերոց. զի ընտրեցիք զՏր պաշտել զնա։ և 23 ասեն՝ վկայք եմք։ *Եւ ասէ. արդ 'ի բաց արարէք 'ի ձէնջ զաստուածս օտարոտիս. և ուղղեցէք զսիրտս ձեր 24 առ Տր Ա̃ծ իսրայէլի։ *Եւ ասէ ժողովուրդն ցյեսու. զՏր Ա̃ծ մեր պաշտեսցուք՝ և ձայնի նորա լուիցուք։ 25 *Եւ ուխտեաց յեսու ուխտ ընդ ժողովրդեանն յաւուր յայնմիկ. և ետ նմա օրէնս, և դատաստանս 'ի սելով։

(առաջի

‖Ծննդ. 11.26. ‖Ծննդ. 11.31. ‖Ծննդ. 21.2. ‖Ծննդ. 25. 26. ‖Ծննդ. 36.8. ‖Ծննդ. 46.6. ‖Ելից. 3.10. ‖Ելից. 12.37. ‖Ելից. 14.9. ‖Թուոց 21.24. ‖Թուոց 22. 5. ‖Օր. 3.14. և 6. 1. և 11.3. ‖Ելից. 23. 28. 2.Օրին. 7. 20. ‖Սեր. 11.20. ‖1 Թագ. 7. 3. Տոբ. 14 11. ‖2. Մն. 15.12.

(առաջի խորանին Ա՟Ծ Իսրայէլի։)

26 * Եւ գրեաց Յեսու զբանս զայսոսիկ 'ի գիրս օրինաց Ա՟Ծ. և էառ վէմ մեծ. և կանգնեաց զնա 'ի ներքոյ բևեկնւոյն առաջի Տ՟ն։

27 * Եւ ասէ Յեսու ցամ ժողովուրդն. ահա վէմս այս եղիցի 'ի վկայութիւն. զի սա լուաւ զամ խօսեցեալսն 'ի Տ՟է զորս խօսեցաւ ընդ ձեզ այսօր։ և եղիցի սա ձեզ 'ի վկայութիւն աւուրց յետնոց՝ յորժամ ստիցէք Տ՟ն Ա՟Ծ ձերում։

28 * Եւ արձակեաց Յեսու զժողովուրդն. և գնացին իւրաքանչիւր 'ի տեղի իւր։

29 * Եւ պաշտեաց Իէլ զՏ՟ր զամ աւուրս Յեսուայ. և զամ աւուրս ծերոցն՝ որք ձգեցին զժամանակս ընդ Յեսուայ. որք և տեսին զամ գործսն Տ՟ն զորս արար յԻսրայէլ։

30 * Եւ եղև յետ այսորիկ մեռանել Յեսուայ որդւոյ Նաւեայ ծառայի Տ՟ն. հարիւր և տասն ամաց։

31 * Եւ թաղեցին զնա առ սահմանօք ժառանգութեն իւրոյ 'ի Թամնաթսարա 'ի լեռնին Եփրեմայ հիւսիսոյ, լեռնին Գայասու։ (Եւ անդ եդին ընդ նմա՝ ուր թաղեցին զնա առ 'ի յիշատակէ զսուրսն քարեղէնս՝ որով թլփատեաց զորդիսն Իէի 'ի գաղգաղայ. յորժամ եհան զնս յերկրէն Եգիպտացւոց՝ որպէս հրամայեաց Տ՟էր՝ և անդ են մինչև ցայսօր ժամանակի։)

32 * ‖ Եւ զոսկերսն Յովսեփու հանին որդիքն Իէի յեգիպտոսէ։ և թաղեցին զնա 'ի Սիկիմ, 'ի բաժնի ագարակին ‖ զոր ստացաւ Յակոբ յամորհացւոցն բնակելոցն 'ի Սիկիմ, որոջաց հարիւրոց։ և ետ զայն Յովսեփայ 'ի բաժին։

‖ Ծն՟նդ. 50. 24. Ելից. 13. 19.
‖ Ծն՟նդ. 33. 19.

33 * Եւ եղև յետ այսորիկ վախճանել Եղիազարու քահանայի որդւոյ Ահարոնի. և թաղեցաւ 'ի գաբաաթ Փենեհսի որդւոյ իւրում, զոր ետ նմա 'ի լեռնին Եփրեմայ։ (Յաւուրսն յայնոսիկ առեալ որդւոցն Իէի զտապանակ ուխտին Ա՟Ծ շրջեցուցանէին ընդ իւրեանս։ և քահանայացաւ Փենեհես փոխանակ Եղիազարու հօր իւրոյ. մինչև մեռաւ՝ և թաղեցաւ յիւրում գաբաաթ։ և որդիքն Իէի գնացին յիւրաքանչիւր տեղիս իւրեանց. և յիւրաքանչիւր քաղաքս իւրեանց. և պաշտեցին որդիքն Իէի զաստարտան և զաստարօթ. և զաստուածս ազգացն՝ որք շուրջ զնոքօք։ և մատնեաց զնս Տ՟ր 'ի ձեռս Էգղոմայ արքայի Մովաբու. և տիրեաց նոցա ամս ութ և տասն։



Եւ ասէ Տէր ցԳեդէոն. երեք հարիւր արամբքդ որք լակեցին զջուրս, ազատեցից զձեզ։ Դատ. 7.7.



Եւ ահա կորիւն մի առիւծու գոչէր յ'ի վր նր. և յաջողեցաւ 'ի վր նր ոգի Տն։ Դատ. 14.6.

# ԳԻՐՔ ԴԱՏԱՒՈՐԱՑ·

## ՈՐ Է ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑԻՈՑՆ ՍՕՓԷՏԻՄ։

Գլուխ Առաջներորդ։

ԵՒ ԵՂԵՒ ՅԵՏ ՎԱԽՃԱՆԵԼՈՅՆ Յեսուայ հարցին որդիքն Իսրայէլի զՏէր և ասեն. ո՞ ելցէ մեզ առ քանանացիսն առաջնորդ՝ պատերազմիլ ընդ նմա։ 2 *Եւ ասէ Տէր՝ յուդա ելցէ. զի ետու զերկիրն 'ի ձեռս նր։ 3 *Եւ ասէ յուդա ցշմաւօն ցեղբայր իւր. ել ընդ իս 'ի վիճակիս իմում. և տացուք պատերազմ ընդ քանանացիսն. եկից և ես ընդ քեզ 'ի քում վիճակին։ և գնաց ընդ նմա շմաւօն։ 4 *Եւ ել յուդա. և ետ Տէր զքանանացին և զփերեզացին 'ի ձեռս նորա։ և եհար զնս 'ի բեզեկ տասն հազար արանց։ 5 *Եւ գտին զադոնիբեզեկ 'ի բեզեկ. և ետուն պատերազմ ընդ նմա։ և հարին զքանանացին և զփերեզացին։ 6 *Եւ փախեաւ ադոնիբեզեկ. և պնդեցան զհետ նր. և հասին նմա. և կտրեցին զծայրս ձեռաց նորա. և զծայրս ոտից նորա։ 7 *Եւ ասէ ադոնիբեզեկ. եօթանասուն թագաւորք ծայրակոտորք ձեռօք և ոտիւք էին՝ որք քաղէին զփշրանս 'ի ներքոյ սեղանոյ իմոյ. որպէս արարի, նոյնպէս հատոյց ինձ Ած։ և ածին զնա յերէմ. և անդ մեռաւ։ 8 *Եւ պատերազմեցան որդիքն յուդայ ընդ երուսաղէմի. և առին զնա. և հարին զնա սրով սուսերի՝ և զքաղաքն այրեցին հրով։ 9 *Եւ յետ այնորիկ իջին որդիքն յուդայ պատերազմիլ ընդ քանանացւոյն. բնակելոյ 'ի

լեռ-

լեռնակողմանն՝ և 'ի հարաւ՝ և 'ի դաշ-
տավայրս: * Եւ գնաց յուդայ 'ի վր 10
քանանացւոյն բնակելոյ 'ի քեբրոն. և
ել քեբրոն ընդդէմ. և էր անուն քեբ-
րոնի յառաջ կարիաթ արբոկսեփեր.
և հարին զսեսի՝ և զաքիման՝ և զթող-
մի. զծնունդսն ենակայ: * Եւ ելին 11
անտի 'ի վերայ բնակչացն դաբիրայ.
էր յառաջագոյն քաղաք նամակաց:
* Եւ ասէ քաղէբ. որ ոք հարցէ զքա- 12
ղաք նամակաց՝ և առցէ զնա. տաց
նմա զաքսա զդուստր իմ՝ կնութեան:
* Եւ էառ զնա գոթոնիել որդի կե- 13
նեզի՝ եղբայր քաղէբայ՝ կրտսեր քան
զնա: և ետ նմա քաղէբ զաքսա զդ-
դուստր իւր կնութեան: * Եւ եղև 'ի 14
գնալն նորա, յորդորեաց զնա գոթո-
նիել խնդրել 'ի հօրէ իւրմէ ագարակ:
և տրտնջեաց՝ և աղաղակեաց յիշոյ
անտի՝ և ասէ. յերկիր հարաւոյ ետուր
զիս: և ասէ ցնա քաղէբ. զի՞ է քեզ:
* Եւ ասէ ցնա աքսա: տուր ինձ օրհ- 15
նութիւն. զի յերկիր հարաւոյ ետուր
զիս: և տացես ինձ զբօսանս ջրոյ: և
ետ նմա քաղէբ ըստ սրտի նորա զբօ-
սանս բարձանց՝ և զբօսանս հովտաց:
* Եւ որդիքն յոբաբայ կինեցւոյ ա- 16
ներոյն մովսէսի՝ ելին 'ի քաղաքէն ար-
մաւենեաց՝ առ որդիսն յուդայի յա-
նապատն յուդայ. որ է 'ի հարաւոյ
յուդայ առ զառիվայրին արադայ. և
գնացին բնակեցան առ ժողովրդեանն:
* Եւ գնաց յուդա ընդ շմաւոնի եղ- 17
բօր իւրոյ՝ և հարին զքանանացին բնա-
կեալ յափեթ. և նզովեցին զնա. և սա-
տակեցին զնա. և կոչեցին զանուն քա-
ղաքին սատակումն: * Եւ ժառան- 18
գեաց յուդա զգազա. և զսահմանս
նր. և զասկաղոն՝ և զսահմանս նր: և
զակկարոն՝ և զսահմանս նորա: և զա-
զովտոս՝ և զանդաստանս նորա: * Եւ 19
էր Տր ընդ յուդայ. և ժառանգեաց
զլեառն՝ զի ոչ կարացին ժառանգել
զբնակիչս հովտացն. զի ռէքաբ զա-
տոյց զնոսա. և կառք երկաթիք էին
նց: * Եւ ետուն քաղէբայ զքեբրոն 20
որպէս խօսեցաւ մովսէս: և ժառան-
գեաց անտի զերիս քաղաքս որդւոյն
ենակայ: և եբարձ անտի զերեսին որ
դիսն ենակայ: * Եւ զյեբուսացին 21
զբնակեալն յերուսաղէմ, ոչ ժառան-
գեցին որդիքն բենիամենի: և բնա-
կեցաւ յեբուսացին ընդ որդիսն բե-
նիամենի մինչև ցայսօր: * Եւ ելին որ 22
դիքն յովսեփու. և նոքեանք 'ի բեթել.
և Տր ընդ նոսա: * Եւ բանակեցան 23
տունն իլի 'ի բեթէլ. և անուն քաղա
քին էր յառաջ լուզայ: * Եւ տեսին 24

Յեսու. 15.13.

Թւոց 14.24.

Յեսու. 15.14.

ոչ ընջե-
ցին

պահապանքն զայր մի ելեալ 'ի քաղա
քէ անտի: կալան զնա՝ և ասեն. ցոյց
մեզ զմուտ քաղաքիդ. և արասցուք
25 ընդ քեզ ողորմութիւն: * Եւ եցոյց նց
զմուտ քաղաքին: և հարին զքաղաքն
սրով սուսերի. և զայրն՝ և զազգա-
26 տոհմն իւր արձակեցին: * Եւ գնաց
այրն յերկիրն 'ի քետիմ. և շինեաց
անդ քաղաք՝ և կոչեաց զանուն նորա
լուզայ. և այն է անուն նորա մինչև
27 ցայսօր: * Եւ ոչ ժառանգեաց մա-
նասէ զբեթսան՝ որ է սկիւթուպօլիս.
և ոչ զդստերս նորա. և ոչ զանդաս-
տանս նր. և ոչ զթանաք՝ և զդստերս
նորա: և ոչ զբնակիչսն դովրայ. և ոչ
զուրջ բնակեալսն վնովլաւ. և ոչ զդ-
դստերս նորա: և սկսաւ քանանացին
28 բնակել յերկրին յայնմիկ: * Եւ եղև
իբրև զօրացաւ իսրլ, եդ զքանանացին
ընդ հարկաւ. և բառնալով ոչ եբարձ
29 զնա: * Եւ եփրեմ ոչ եբարձ զքանա
նացին զբնակեալսն 'ի գազեր. և բնա
կեցաւ քանանացին 'ի մէջ նր 'ի գա-
30 զեր. և եղև նմա հարկատու: * Եւ
զաբուղոն ոչ եբարձ զբնակիչսն կեդ-
րոնի՝ և զբնակիչսն ամմնայ. և բնա-
կեցաւ քանանացին 'ի մէջ նորա՝ և եղև
31 նմա հարկատու: * Եւ ասեր ոչ ե-
բարձ զբնակիչսն ակքովայ. և եղև
նմա հարկատու: և զբնակիչսն դով-
րայ: և զբնակիչսն սիդոնի: և զբնա-
կիչս դաղափայ. և զաքազիփ. և զել-
32 փա. և զափեկ. և զռոփ: * Եւ բնա-
կեցաւ ասեր 'ի մէջ քանանացւոյն բնա
կելոյն յերկրին. քանզի ոչ կարացին
33 բառնալ զնա: * Եւ նեփթաղիմ ոչ
եբարձ զբնակիչսն բեթսամիւսայ. և
ոչ զբնակիչսն բեթանաթայ. և բնա
կեցաւ նեփթաղիմ 'ի մէջ քանանաց
ւոյն բնակելոյն յերկրին. և բնակիչքն
բեթսամիւսայ՝ և բեթանաթայ եղեն
34 նմա հարկատուք: * Եւ նեղեաց ամօր
հացին զորդիսն դանայ 'ի լերինն. զի
ոչ տային նց թոյլ իջանել 'ի հովիտն:
35 * Եւ սկսաւ ամօրհացին բնակել 'ի
լերինն բուրաստանի. ուր արջք՝ և
աղուէսք 'ի մուրաստանն և 'ի սաղա-
ալին. և ծանրացաւ ձեռն յովսեփայ 'ի
վերայ ամօրհացւոյն. և եղեն նմ հար
36 կատուք: * Օր սահման ամուրհաց-
ւոյն եդեմայեցին էր. 'ի վր զառիվայ
րին ակրաբինայ և 'ի վիմէն և 'ի վեր:

## ԳԼ: Բ:

1 Եւ ել հրեշտակ Տն 'ի գաղգաղայ
'ի լալեաղն և 'ի բեթել. և 'ի
տունն իլի. և ասէ ցնս. այսպէս ասէ
Տր: Տր եհան զձեզ յեգիպտոսէ. և

եած զձեզ յերկիրդ՝ յոր երդուաւ
հարցն ձերոց տալ ձեզ․ և ասէ ցձեզ
ոչ ցրեցից զուխտն իմ, որ ընդ ձեզ
յաւիտեան ։ * Եւ մի դնիցէք ուխտս 2
ընդ բնակիչս երկրիդ այդորիկ․ և մի
ընդ դիս նոցա․ և մի երկիրպագանի
ցէք նոցա․ այլ զդրօշեալս նց խոր֊
տակեսջիք․ և զսեղանս նոցա կործա
նեսջիք․ և ոչ լուայք ձայնի իմում՝
քանզի արարէք զայն ։ * Եւ ասացի 3
թէ ոչ յաւելից փոխել զժողովուրդն՝
զոր յաւելի ստանալ․ և ոչ բարձից
զնոսա յերեսաց ձերոց․ և եղիցին ձեզ
՚ի վտանգս․ և դիք նոցա եղիցին ձեզ
՚ի գայթագղութի ։ * Եւ եղև իբրև 4
խօսեցաւ հրեշտակն Տն զբանս զայսո
սիկ՝ առ ամենայն որդիսն իէլի․ ամ֊
բարձին ժողովուրդքն զձայնս իւր֊
եանց՝ և լացին ։ * Եւ վասն այնորիկ 5
կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ լա֊
Յեսու. 24. 28. լոնք՝ և զոհեցին անդ Տն ։ * Եւ ար֊ 6
ձակեաց յեսու զժողովուրդն․ և գնա
ցին որդիքն իէլի յիւրաքանչիւր տունս
իւր՝ և յիւրաքանչիւր ժառանգութին
իւր՝ ժառանգել զերկիրն ։ * Եւ ծա 7
ռայեաց ժողովուրդն Տն զամ աւուրս
յեսուայ, և զամ աւուրս ծերոցն՝ որք
միանգամ երկայնակեացք եղեն ընդ
յեսուայ․ որք գիտակ լեալ էին ամ
մեծամեծ գործոց Տն զորս արար
յիէլ ։ * Եւ վախճանեցաւ յեսու որ֊ 8
դի նաւեայ ծառայ Տն․ որդի հարիւր
և տասն ամաց ։ * Եւ թաղեցին զնա 9
՚ի լերինն ժառանգութե նր, ՚ի թամ
նաթսարես՝ ՚ի լերինն եփրեմի ՚ի հիւսի
սոյ լերինն գայասու ։ * Եւ ամենայն 10
ազգն այն յաւելան առ հարս իւրեանց․
յարեաւ այլ ազգ՝ որք ոչ ճանաչէին
զՏր՝ և ոչ զգործսն՝ զորս արար ՚ի մէջ
իէլի ։ * Եւ արարին որդիքն իսրայէլի 11
չար առաջի Տն․ և պաշտեցին զբահա
ղիմ ։ * Եւ թողին զՏր Ած հարցն 12
իւրեանց՝ որ եհան զնոսա յերկրէն ե֊
գիպտացւոց՝ և գնացին զհետ աստու
ծոց օտարաց․ աստուծոց ազգացն՝
որք շուրջ զնոքօք․ և երկիր պագին նց․
և բարկացուցին զՏր ։ * Եւ թողին 13
զնա՝ և պաշտեցին զբահաղ․ և զաս֊
տարտոն ։ * Եւ բարկացաւ սրտմտու֊ 14
թբ Տր իէլի․ և մատնեաց զնոսա Տր
՚ի ձեռս աւարառուացն․ և աւերեցին
զնոսա․ և ետ զնա Տր ՚ի ձեռս թշնա֊
մեաց իւրեանց շուրջանակի․ և ոչ կա
րացին կալ ընդդէմ թշնամեաց իւր
եանց ամենեցունց՝ ընդ որս պռնկե
ցան ։ * Եւ ձեռն Տն էր նոցա ՚ի չա֊ 15
րութի՝ որպէս և խօսեցաւ Տր․ և որպ
երդուաւ Տր․ և նեղեաց զնոսա յոյժ ։

16 * Եւ յարոյց նոցա Տր դատաւորս․ և
փրկեաց զնոսա Տր ՚ի ձեռաց աւար֊
առուաց նց․ սակայն և նց ոչ լուան
17 * Զի պոռնկեցան զհետ աստուծոց
օտարաց․ և երկիր պագին նոցա․ և
բարկացուցին զՏէր․ և խոտորեցան
վաղվաղակի ՚ի ճանապարհէն՝ ընդ որ
գնային հարքն նոցա՝ լսել պատուի֊
րանաց Տն․ և ոչ արարին այնպէս ։
18 * Եւ յորժամ յարոյց նց Տր դատաւ
որս․ և էր Տր ընդ դատաւորին․ և
փրկեաց զնոսա ՚ի ձեռաց թշնամեաց
նոցա՝ զամ աւուրս դատաւորին․ զի
մխիթարեցաւ Տր ՚ի հեծութենէ նց
յերեսաց պաշարողացն նոցա՝ որք չար
19 չարէին զնոսա ։ * Եւ լինէր իբրև
մեռանէր դատաւորն, դառնային միւս
անգամ եղծանիլ առաւել քան զհարս
իւրեանց՝ երթալ զհետ աստուծոց
օտարաց․ պաշտել զնոսա, և երկիր֊
պագանել նոցա․ և ոչ ընկեցին ՚ի բաց
զարուեստս իւրեանց․ և ոչ հատան ՚ի
20 խիստ ճանապարհաց իւրեանց ։ * Եւ
բարկացաւ սրտմտութբ Տր իսրայէ֊
լի՝ և ասէ․ փոխանակ զի եթող ազգդ
այդ զուխտ իմ, զոր պատուիրեցի
հարց դոցա․ և ոչ լուան ձայնի իմում ։
21 * Եւ ես ոչ յաւելից բառնալ զայր
յերեսաց նոցա յազգացն՝ զորս եթող
22 յեսու որդի նաւեայ ։ * Եւ եթող
փորձել նովաւ զիէլ՝ եթէ զգուշա֊
նայցեն ճանապարհին Տն գնալ ընդ
նա․ զոր օրինակ զգուշացան հարքն
23 նոցա․ և եթէ ոչ ։ * Եւ եթող Տէր
զազգսն զայնոսիկ՝ չբառնալ զնոսա
վաղվաղակի․ և ոչ մատնեաց զնոսա
՚ի ձեռս յեսուայ ։

## ԳԼ․ Գ․

1 Եւ այս ազգք են՝ զորս եթող յե֊
սու փորձել նոքօք զիէլ․ զամե֊
նեսին որք ոչ գիտէին զամ պատե֊
2 րազմունս քանանացւոց ։ * Բայց վն
ազգաց որդւոցն իէլի ուսուցանել նց
պատերազմ․ սակայն և որք յառաջա
գոյն քան զնոսա էին՝ ոչ գիտէին ։
3 * Զհինգ նախարարութիս այլազ֊
գեաց․ և զամ քանանացին․ և զսիդո
նացին․ և զխևացին զբնակեալն ՚ի լի
բանան ՚ի լեռնէն բաղհերմոնեայ՝
4 մինչև ցղաբովեմաթ ։ * Եւ եղև ՚ի
փորձել նոքօք զիէլ․ գիտել եթէ լսի
ցեն պատուիրանացն Տն՝ զորս պատ֊
ուիրեաց հարցն նոցա ՚ի ձեռն մովսէսի
5 * Եւ որդիքն իսրայէլի բնակեցան ՚ի
մէջ քանանացւոյն․ և քետացւոյն․ և
ամօրհացւոյն․ և փերեզացւոյն․ և խև
ացւոյն․ և յեբուսացւոյն․ և գերգե֊
սաց֊

սացւոյն: *Եւ առին զդստերս նոցա (6) իւրեանց 'ի կանայս. և զդստերս իւրեանց ետուն ուստերաց նոցա. և պաշտեցին զդիս նոցա: *Եւ արարին որդիքն Իսրայէլի չար առաջի Տն. (7) և մոռացան զՏր Ած իւրեանց. և պաշտեցին զբահաղ և զանտառսն: *Եւ բարկացաւ սրտմտութիւն Տն Իսրայէլի. (8) և մատնեաց զնոսա 'ի ձեռս քուսարսաթեմայ արքային ասորւոց միջագետաց. և ծառայեցին նմա ամս ութ: *Եւ աղաղակեցին որդիքն Իսրայէլի առ Տր. (9) և յարոյց Տր փրկիչ Իսրայէլի և ետ նա զգոթոնիէլ որդի կենեզայ. զեղբայր քաղեբայ կրտսեր քան զնա: *(Եւ լռեաւ նոցա.) (10) և եղև 'ի նմա հոգի Տն. և դատեաց զԻսրայէլ. և ել 'ի պատերազմ ընդ քուսարսաթեմայ. և մատնեաց Տր 'ի ձեռս նորա զքուսարսաթեմ արքայ ասորւոց. և սաստկացաւ ձեռն նր 'ի վերայ քուսարսաթեմայ: *Եւ դադարեաց երկիրն ամս քառասուն. (11) և մեռաւ գոթոնիէլ որդի կենեզի: *Եւ յաւելին որդիքն Իսրայէլի (12) առնել չար առաջի Տն. և զօրացոյց Տր զեգղոմ արքայ մովաբու 'ի վերայ Իսրայէլի. վասն առնելոյ նոցա չար առաջի Տն: *Եւ ժողովեաց 'ի վերայ նոցա (13) զամ որդիսն ամոնայ. և զամաղէկ. և չոգաւ եհար զԻսրայէլ. և ժառանգեաց զքաղաքն արմաւենեաց: *Եւ ծառայեցին (14) որդիքն Իսրայէլի եգղոմայ արքայի մովաբու ամս ութուտասն:

*Եւ աղաղակեցին որդիքն Իսրայէլի առ (15) Տր. և յարոյց նց Տր փրկիչ զաւովդ որդի գերեայ զորդի առն յեմինեցւոյ. զերկոցունց ձեռաց աջողակն. և առաքեցին որդիքն Իսրայէլի 'ի ձեռս նր պատարագս եգղոմայ արքայի մովաբու: *Եւ արար իւր աւովդ սուր երկսայրի (16) թզաւ յերկայնութն. և եդ յաջոյ ազդեր իւրում ընդ սաւառնաւն. և գնաց: *Եւ մատոյց զպատարագսն (17) եգղոմայ արքայի մովաբու: և եգղոմ էր այր յոյժ յոյժ: *Եւ եղև իբրև (18) վախճանեաց աւովդ մատուցանել զպատարագսն. և արձակեաց զպատարագաբարձսն: *Եւ եգղոմ դարձաւ (19) 'ի դրօշելոյն հանդերձ գաղաղաւն: և ասէ աւովդ. բանք ինչ են ինձ ընդ քեզ լռելեայն արքայ: և ասէ եգղոմ լռեա լեր: և ասէ ցամենեսին. 'ի բաց գնացէք. և ելին արտաքս որք զնովաւն կային: *Եւ նա նստէր յամարանոցի (20) 'ի վերնատանն իւրում միայն առանձինն: և ասէ աւովդ. պատգամ Այ է իմ առ քեզ արքայ: և յարեաւ եգղոմ յաթոռոյն մերձ առ նա:

21 *Եւ եղև ընդ յառնելն նր ձգեաց աւովդ զձեռն իւր զձախ. և էառ զսուրն յաջոյ ազդերէ իւրմէ. և եհար 'ի կշտի եգղոմայ: 22 *Նարկ և զերախակալն ևս զհետ մխրճին. և արգել ճարպն զվիրաբերանն. զի ոչ ձգեաց 'ի բաց զսուրն 'ի կշտէ նր: 23 *Եւ ել 'ի պատշգամն. և եանց ընդ վանդակապատսն. և փակեաց զդուրս վերնատանն ընդդէմ նր. և ինքն ել և գնաց: 24 *Եւ ծառայքն նորա մտին և տեսին. և ահա դուրք վերնատանն փակեալ էին: և ասեն դուցէ յաթոռն նստիցի 'ի պէտս 'ի սենեկին: 25 *Եւ կացին մնացին ամաչեցեալք: և ահա ոչ ոք էր որ բանայր զդուրս վերնատանն: և առին զբանալին և բացին. և ահա տէրն իւրեանց անկեալ կայր մեռեալ 'ի գետնի: 26 *Եւ աւովդ զերծաւ 'ի սիրօթայ մինչ նոքա զաղմկաւն էին. և ոչոք էր որ փոյթ առնէր զնըմանէ: և նա եանց առ դրօշելովքն. և զերծաւ անկաւ 'ի սիրօթայ: 27 *Եւ եղև իբրև եկն աւովդ յերկիրն Իսրայէլի. եհար փող 'ի լերինն եփրեմայ. և իջին ընդ նմա որդիքն Իսրայէլի 'ի լեռնէ անտի. և ինքն առաջի նոցա: 28 *Եւ ասէ ցնոսա. իջէք զկնի իմ. զի մատնեաց Տր Ած մեր զթշնամիս մեր զմովաբացիս 'ի ձեռս մեր: և իջին զկնի նորա. և կալան նախ զանցսն յորդանանու 'ի մովաբայ. և ոչ թողին մարդոյ անցանել: 29 *Եւ հարին 'ի մովաբայ յաւուր յայնմիկ իբրև տասն հազար արանց զամ պատերազմօղս 'ի նոցանէ: և զամ զայր զօրութե. և ոչ ապրեցաւ և ոչ մի այր: 30 *Եւ վանեցաւ մովաբ յաւուր յայնմիկ ընդ ձեռամբ Իսրայէլի: և դադարեաց երկիրն ամս ութսուն: և դատեաց զնոսա աւովդ մինչև մեռաւ: 31 *Եւ յետ նորա յարեաւ սամեգար որդի անաթայ. և եհար յայլազգեացն վեց հարիւր այր. թող զօրթս արջառոյ: և փրկեաց նա զԻսրայէլ:

խոփիւ արջառոյ

## ԳԼ: Գ:

1 Եւ յաւելին որդիքն Իսրայէլի առնել չար առաջի Տն. և սամեգար մեռաւ: 2 *‖Եւ մատնեաց զնոսա Տր 'ի ձեռս յաբինայ արքայի քանանացւոց. որ թագաւորեաց յասոր: և իշխան զօրու նորա սիսարա. և ինքն բնակէր յարիսոթ ազգաց: 3 *Եւ աղաղակեցին որդիքն Իսրայէլի առ Տր. զի իննհարիւր կառք երկաթիք էին նորա. և նա նեղէր զԻսրայէլ սաստիկ ամս քսան: 4 *Եւ դեբօրա կին մարգարէ. կին ղա_

‖ Ա թագ 12.9.

բիդօթայ. նա դատէր զիէլ 'ի ժամանակին յայնմիկ: * Եւ ինքն բնակեալ էր ընդ արմաւենեաւն դեբովրայ. 'ի մէջ ռամայ և 'ի մէջ բեթելայ՝ 'ի լերինն եփրեմայ. և ելանէին որդիքն իէլի առ նա 'ի դատաստան: 5

* Եւ առաքեաց դեբովրա՝ և կոչեաց զբարակ զորդի աբինէեմայ 'ի կադեսայ նեփթաղիմի. և ասէ ցնա. ոչ ապաքէն հրաման ետ Տր̄ Ա̄Ծ իէլի. և երթիցես 'ի լեառն թաբօր. և առցես ընդ քեզ տասն հազար արանց յորդւոցն նեփթաղիմայ. և յորդւոցն զաբուղոնի: 6

* Եւ տարցես ընդ քեզ 'ի հեղեղատն կիսոնի. 'ի վերայ սիսարայ իշխանի զօրուն յաբինայ՝ և զօրաց նորա. և կառաց նորա. և մատնեցից զնա 'ի ձեռս քո: 7

* Եւ ասէ ցնա բարակ. եթէ երթիցես ընդ իս՝ երթայց. և եթէ ոչ երթիցես ընդ իս՝ ոչ երթայց: (քանզի ոչ գիտեմ զօրն՝ յորում յաջողեսցէ Տր̄ զհրեշտակ իւր ընդ իս): 8

* Եւ ասէ ցնա դեբովրա. երթալով երթայց ը̄ քեզ. բայց գիտասջիր՝ զի ոչ քո լիցի քաջութի 'ի ճանապարհին՝ ուր երթիցես. քանզի 'ի ձեռն կնոջ մատնեսցէ Տր̄ զսիսարայ: և յարեաւ դեբովրա. և գնաց ընդ բարակայ 'ի կադէսայ: 9

* Եւ պատուէր ետ բարակ զաբուղոնի. և նեփթաղիմի 'ի կադէս. և ելին զհետ նորա տասն հազար արանց: ել ընդ նմա և դեբովրա: 10

* Եւ մերձաւորք կինեցւոյն մեկնեցան 'ի կինեայ յորդւոցն յոբաբայ աներոյն մովսէսի: և եհար զխորան իւր առ կաղնեաւն հանգուցելոցն՝ որ է մերձ 'ի կադէս: 11

* Եւ ազդ եղև սիսարայ եթէ ել բարակ որդի աբինէեմայ 'ի լեառն թաբօր: 12

* Եւ գումարեաց սիսարա զա̄մ կառս իւր. ինն հարիւր կառս երկաթեղէնս. և զա̄մ զօրն որ ընդ իւր յարիսօթայ ազգաց՝ 'ի հեղեղատն կիսոնի: 13

* Եւ ասէ դեբովրա ցբարակ. արի, զի այսօր է՝ յորում մատնեաց Տր̄ զսիսարա 'ի ձեռս քո. զի ահա Տր̄ է առաջի քո: և էջ բարակ 'ի լեռնէն թաբօրայ. և տասնհազար արանց զհետ նր̄: 14

Սաղմ. 82.10.

* Եւ զարհուրեցոյց Տր̄ զսիսարա. և զամենայն կառս նորա. և զա̄մ բանակն նր̄՝ սրով սուսերի առաջի բարակայ: և էջ սիսարա 'ի կառաց իւրոց՝ և փախեաւ հետիոտս: 15

* Եւ բարակ զհետ մտեալ երթայր զկնի կառացն. և զհետ բանակին մինչև յանտառն ազգաց: և ան կաւ ա̄մ բանակն սիսարայ սրով սուսերի. և ոչ մնաց և ոչ մի: 16

* Եւ սիսարա մեկնեցաւ՝ և գնաց հետիոտս 'ի խորանն յայելի կնոջ քաբերայ կինեցւոյ. քանզի խաղաղութի էր 'ի մէջ յաբինայ արքայի ասորայ և 'ի մէջ տանն քաբերայ կինեցւոյ: 17

18 * Եւ ել յայել ընդ առաջ սիսարայ՝ և ասէ ցնա: խոտորեաց առ իս տէր իմ, խոտորեաց, և մի երկնչիր: և խոտորեցաւ առ նա 'ի խորանն. և ծածկեաց զնա ընդ փեղկիւք նորա:

19 * Եւ ասէ ցնա սիսարա. արբո ինձ սակաւ մի ջուր՝ զի ծարաւի եմ: և եբաց զտիկ կաթինն՝ և արբոյց նմա. և ծածկեաց զերեսս նր̄:

20 * Եւ ասէ ցնա սիսարա. կաց դու առ դրան խորանիդ. և եղիցի եթէ եկեսցէ ոք առ քեզ. և հարցցէ՝ և ասասցէ ոք ցքեզ. եթէ է ոք այդր այր, ասասցես՝ թէ ոչ է:

21 (* Եւ ծածկեաց զնա ընդ փեղկիւքն նորա:) և էառ յայել կին քաբերայ զցից խորանին. և կալաւ զուռն 'ի ձեռին իւրում. և եմուտ մեղմ առ նա. և բախեաց զցիցն ընդ ծամելիս նորա՝ և վարսեաց ընդ գետինն. և նա տապալեցաւ 'ի մէջ ոտից նր̄. և եհան զոգի:

22 * Եւ ահա բարակ պնդեալ գայր զհետ սիսարայի: և ել յայել ընդ առաջ նորա՝ և ասէ ցնա. եկ այսր. և ցուցից քեզ զայրն՝ զոր դու խնդրես. և եմուտ առ նա: և ահա սիսարա կայր անկեալ և մեռեալ՝ և ցիցն 'ի ծամելւոջ նորա:

23 * Եւ կործանեաց Տր̄ Ա̄Ծ յաւուր յայնմիկ զյաբին արքայ քանանացւոց առաջի որդւոցն իսրայէլի:

24 * Եւ ձեռն որդւոցն իէլի երթալով երթայր խստացեալ 'ի վերայ յաբինայ արքայի քանանացւոց՝ մինչև սատակեցան:

## ԳԼ. Ե:

1 Եւ օրհնեաց դեբովրա. և բարակ որդի աբինէեմայ յաւուր յայնմիկ՝ և ասեն:

2 * Ի սկսանել զօրավարացն իսրայէլի. մտադիւրութը̄ ժողովրդեանն օրհնեցէք զՏր̄:

3 * Լուարուք թագաւորք՝ և ունկնդիր լերուք նախարարք. ես Տն̄ երգեցից. և սաղմոս ասացից Ա̄Յ իսրայէլի:

4 * Տր̄ յելանել քո 'ի սէիրայ. և 'ի չուել քում յանդաստանացն եդովմայ՝ երկիր շարժեցաւ. և երկինք խռովեցան. և ամպք ցօղեցին զջուր:

5 * Լերինք շարժեցան յերեսաց Տն̄ ելովայ սինայի. յերեսաց Տն̄ Ա̄Յ իէլի:

6 * Յաւուրցն սամեգարայ որդւոյ անաթայ՝ յաւուրս յայելի պակասեցան թագաւորք: և գնացին ը̄ շաւիղս. գնացին ընդ ճանապարհս կամակորս:

7 * Պակասեցան փարազունք բնակեալք 'ի մէջ իսրայէլի պակասեցան՝ մինչև յարեաւ դեբովրա. մինչև

մինչև յարեաւ մայր իսրայէլի։ 8 *Յանկացան իբրև զարեղէն նկանակի աստուծոց օտարաց նորոց։ յայնժամ պատերազմեցան քաղաքք իշխանաց։ ծածկութի նորոց գեղարդեանց. քառասուն հազար այր 'ի մէջ իսրայէլի։ 9 *Սիրտ իմ 'ի վերայ կարգելոցն իէլի։ զօրաւորք ժողովրդեանն օրհնեցէք զՏր։ 10 *Հեծեալք յերիվարս 'ի միջօրէի. և սպիտակաց. երթեալք յատեանս ատենակալաց. տուք ձայն բարբառոյ։ 11 *Նուագածուաց 'ի մէջ ցնծացելոց։ անդ տայեն արդարութի Տն զարդարութի զօրացոյց 'ի մէջ իէլի։ յայնժամ էջ 'ի քաղաքս ժողովուրդն Տն։ 12 *Զարթի՛ր, զարթի՛ր դեբօրա. զարթո՛ զբիւրաւորս համդերձ ժողովրդեամբ։ զարթի՛ր, զարթի՛ր, խօսեա՛ց երգովք։ զօրացեալ յարիցես բարակ. գերեսցես զգերութի քո՝ որդի աբինէեմայ։ 13 *Յայնժամ մեծացաւ զօրութի նորա. Տէր ընկրկեաց ինձ զզօրագոյնս քան զիս։ 14 *Ժողովուրդ եփրեմայ պատժեաց զնոսա 'ի հովիտն։ եղբայր քո բենիամին՝ քոյին ժողովուրդ։ յինէն 'ի մաքիրայ իջին խուզարկուք։ և 'ի զաբուղոնէ զօրացուցիչք. գաւազանաւ պատմութե դպրի։ 15 *Եւ զօրավարք իսաքարու ընդ դեբօրայ՝ և ընդ բարակայ։ և այս բարակ 'ի հովիտն առաքեաց զոտս իւր. 'ի բաժինս ռուբենի մեծամեծ ճշդութիք սրտի։ 16 *Ընդէ՞ր նստիցին 'ի մէջ մոսփաթեմայ. լսել զշաչիւնս տագնապողաց. անցանել 'ի կողմն ռուբենի։ մեծամեծք յարուցեալ կան հետազօտութիք սրտից։ 17 *Գաադ՝ յայնկոյս յորդանանու բնակեցաւ։ և դան ընդէ՞ր բնաւ պանդխտիցիս 'ի նաւս։ ասեր՝ բնակեաց առ ծովեզերբ ծովուց. և 'ի կիրճս նր բնակեսցի։ 18 *Զաբուղոն՝ ժողովուրդ՝ անձնանախատ 'ի մահ. և նեփթաղիմ 'ի բարձունս ագարակի։ 19 *Հասին թագաւորք՝ և ճակատեցան. յայնժամ տագնապեցան թագաւորք քանանացւոց 'ի թանաք 'ի վր ջրոց մակեդդովայ։ զագահութի արծաթոյ ես ոչ առին։ 20 *‖ Յերկնից ճակատեցան աստեղք՝ յիւրաքանչիւր յօրինուածոց՝ ետուն պատերազմ ընդ սիսարայ։ 21 *Հեղեղատն կիսոնի մերժեաց զնոսա. հեղեղատն կադեսիմայ. հեղեղատն կիսոնի։ կոխեսցէ զնոսա անձն իմ։ 22 *Ոտք իմ զօրացի զօրութե։ յայնժամ կարթակոտորք եղեն գարշապարք երիվարաց մադդարօթայ։ և հարթեցեն գարշապարք իմ զհպարտութիս զարհուրանաց նց։ 23 *Նզովեցէ՛ք զմարովզ՝ ասէ հրեշտակն Տն՝ անիծանելով անիծէ՛ք զբնակիչս նորա. զի ոչ եկին յօգնականութի Տն։ օգնական Տր 'ի մէջ նահատակաց հզօրն։ 24 *Օրհնեալ լիցի 'ի կանանց յայէլ կին քաբերայ կինեցւոյ. օրհնեսցի 'ի կանանց 'ի խորանի իւրում։ 25 *Ջուր խնդրեաց, և ետ կաթն՝ դաշխուրանաւ զօրաւորաց մատոյց զկոգի։ 26 *Զձեռն իւր ձախ ձգեաց 'ի ցիցն. և զաջ իւր խապառսպուռ ջախջախանս անպիտանացուցանել. և վախճանեցոյց զսիսարա։ վարսեաց ընդ ծամելիսն նր. և անցոյց ցից ընդ գլուխ նորա. և սատակեաց։ 27 *'Ի մէջ ոտից նորա անկաւ ծանրացեալ. և նիրհեցոյց 'ի մէջ ծնգաց իւրոց. յորում կորացաւ՝ մինչև զգետնեցաւ՝ անդ անկաւ չուառականն։ 28 *Մայրն սիսարայ հայեցեալ դէտակն ունէր 'ի վանդակապատ պատուհանէն՝ քանզի տեսանէր զդարձեալսն 'ի սիսարայ. վասն զի յամեցան կառք նր 'ի գալոյ. ընդէ՞ր յամեցին հետք կառաց նր։ 29 *Կանայք իմաստունք իշխանաց նր ետուն անդրէն պատասխանի նմա՝ և սա ևս ինքնին անձամբ անձին առնէր իւր պատասխանի։ 30 *Ոչ գտանիցեն զնա աւարաբաշխք. առնել սէր բարեկամաց 'ի գլուխ արանց. և էգել զաղխս նորա կապուտ երանգոյն սիսարայ. կապուտ երանգոյն գունագոյն նկարուց. նարօտ պէսպէս նկարուց. այն էր պարանոցի նորա կապուտ։ 31 *Նոյնպէս կորիցեն ամենայն թշնամիք քո Տր։ և որք սիրեցին զնա՝ իբրև զելս արեգական 'ի զօրութե նր։ 32 *Եւ դադարեաց երկիրն ամս քառասուն։

‖ Յօբ. 38.23.

## ԳԼ: Զ:

1 Եւ արարին որդիքն իէլի չար առաջի Տն՝ և ետ զնոսա Տր 'ի ձեռս մադիամու ամս եօթն։ 2 *Եւ զօրացաւ ձեռն մադիամու 'ի վերայ իէլի։ և արարին իւրեանց որդիքն իէլի յերեսաց մադիամու գուբս 'ի լերինս. յայրս և յամուրս։ 3 *Եւ լինէր իբրև վարէր այր իէլ։ ելանէր մադիամ և ամաղէկ. և որդիքն արևելեայց հասանէին 'ի վր նոցա։ 4 *Եւ բանակէին առնոքօք. և ապականէին զբերս երկրին մինչև 'ի մուտս գազայ։ և ոչ թողուին զաղար կենաց յիէլի։ ոչխար. և արջառ. և էշ։ 5 *Զի ինքեանք, և խաշինք իւրեանց ելանէին. և զվրանս իւրեանց բերէին. և հասանէին իբրև զմա_

զմարախ բազմութե՟ն. և ո՛չ գոյր թիւ նոցա. և ուղտուց իւրեանց. և հասանէին յերկիրն Իէլի ապականել զնա: 6 *Եւ աղքատացաւ Իէլ յոյժ յերեսաց Մադիամու: Եւ աղաղակեցին որդիքն Իէլի առ Տր: 7 *Եւ եղև իբրև աղաղակեցին որդիքն Իէլի առ Տր վ՟ն Մադիամու: 8 *Եւ առաքեաց Տէր այր մարգարէ առ որդիսն Իսրայէլի՝ և ասէ ցնոսա. այսպէս ասէ Տր Ա՟ծ Իէլի. ես եմ որ հանի զձեզ յերկրէն եգիպտացւոց. և կորզեցի զձեզ ՚ի տանէ ծառայութե՟ն: 9 *Եւ փրկեցի զձեզ ՚ի ձեռաց եգիպտացւոցն. և ՚ի ձեռաց ա՟մ նեղչաց ձերոց. և մերժեցի զն՟ա յերեսաց ձերոց. և ետու ձեզ զերկիրն նոցա: 10 *Եւ ասացի ցձեզ. ես եմ Տր Ա՟ծ ձեր. մի՛ երկնչիք յաստուծոց ամօրհացւոցն. յորոց միջի դուք բնակեալք յերկրի նոցա. և ո՛չ լուեայք ձայնի իմում: 11 *Եւ եկն հրեշտակ Տն. և նստաւ ընդ կաղնեաւն՝ որ էր յեփրայ յովասու հօր եզրեայ. և գեդէօն որդի ն՟ր ծեծէր զցորեան ՚ի կալ՝ փախչել յերեսաց Մադիամու: 12 *Եւ երևեցաւ նմա հրեշտակ Տն և ասէ ցնա: Տր ընդ քեզ հզօր զօրու՟թ: 13 *Եւ ասէ ցնա գեդէօն. յիս Տր իմ. եթէ էր Տր ընդ մեզ. ընդէ՞ր գտին զմեզ ա՟մ չարիքս այսոքիկ. և ո՞ւր են ա՟մ սքանչելիքն ն՟ր՝ զորս պատմեցին մեզ հարքն մեր՝ և ասեն. ո՛չ ապաքէն յեգիպտոսէ եհան զմեզ Տէր: և արդ ընդէ՞ր մերժեաց զմեզ. և մատնեաց զմեզ ՚ի ձեռս Մադիամու: 14 *Եւ հայեցաւ ի՟ն նա հրեշտակն Տն. և ասէ ցնա. ‖ Երթ զօրութ՟եդ քով այդու՛իկ. և փրկեսցես զԻէլ ՚ի ձեռաց Մադիամու. ո՛չ աւասիկ ես առաքեցի զքեզ: 15 *Եւ ասէ ցնա գեդէօն. յիս Տր՝ ի՞ւ փրկեցից զԻէլ՝ և ահա հազարաւորն իմ խոնարհագոյն է ՚ի մէջ մանասէի: և ես կրտսեր եմ՝ ՚ի տան հօր իմոյ: 16 *Եւ ասէ ցնա. Տր ընդ քեզ. և հարցես զՄադիամ իբրև զայր մի: 17 *Եւ ասէ գեդէօն. եթէ գտի շնորհս առաջի աչաց քոց. արասցես ինձ զնշան՝ եթէ դու խօսեցիր ընդ իս: 18 *Մի՛ գնասցես աստի՝ մինչև եկից առ քեզ. և բերից զպոհ իմ, և եդից առաջի քո: և ասէ՝ ես եմ. և նստայց աստ՝ մինչև դարձցիս առ իս: 19 *Եւ եմուտ գեդէօն՝ և հասոյց ուլ մի յայծեաց. և արդու մի ալեւր բաղարջ. և զմիսն եդ ՚ի վերայ խանի. և զարգանակն եարկ ՚ի պղյան. և եհան առ նա ընդ կաղնեաւն՝ և երկիր եպագ: 20 *Եւ ասէ ցնա հրեշտակն Տն. ա՛ռ դու զմիսդ՝ և զհացդ բաղարջ. և դի՛ր ՚ի վերայ վիմին այնորիկ. և հե՛ղ զարգանակն: և արար այնպէս: 21 *Եւ ձգեաց հրեշտակն Տն զծայր գաւազանին՝ որ ՚ի ձեռին իւրում. և հասոյց ՚ի միսն և ՚ի բաղարջսն. և բորբոքեցաւ հուր ՚ի վիմէ անտի. և եկեր զբաղարջսն. և հրեշտակն Տն գնաց յաչաց ն՟ր: 22 *Եւ ետես գեդէօն թէ հրեշտակ Տն է: և ասէ գեդէօն. ա՛. ա՛. Տր Տր. զի տեսի զհրեշտակն Տն դէմ յանդիման: 23 *Եւ ասէ ցնա Տր. խաղաղութի ընդ քեզ. մի՛ երկնչիր. ո՛չ մեռանիցիս: 24 *Եւ շինեաց անդ գեդէօն զսեղան Տն. և կոչեաց զնա խաղաղութի Տն մինչև ցայսօր: և մինչդեռ ինքն անդէն էր յեփրայ հօր իւրոյ եզրեայ: 25 *Եւ եղև ՚ի գիշերին յայնմիկ՝ և ասէ ցնա Տր. ա՛ռ դու քեզ զեզն պարարակ հօր քոյ. և զեզն զերկրորդ զեօթն ամեան. և քակեսցես զսեղանն բահաղու՝ որ է հօր քոյ. և կոտորեսցես զանտառն՝ որ զնովաւ: 26 *Եւ շինեսցես սեղան Տն Ա՟յ քում. որ երևեցաւ քեզ ՚ի գլուխ լերինն մանօզայ. ՚ի տեղւոջ պատերազմին. և առցես զեզն զերկրորդ. և հանցես յողջակէզ փայտիւք անտառին՝ զոր կոտորեսցես: 27 *Եւ էառ գեդէօն երեքտասան այր ՚ի ծառայից իւրոց. և արար՝ ո՟րպ և խօսեցաւ ընդ նմա Տր. և եղև իբրև երկեաւ ՚ի տանէ հօր իւրոյ՝ և յարանց քաղաքին առնել ՚ի տուէ. արար ՚ի գիշերի: 28 *Եւ կանխեցին արք քաղաքին ընդ առաւօտն. և ահա կործանեալ էր սեղանն բահաղու. և անտառն որ զնովաւ կոտորեալ. և եզն պարարակ հանեալ ողջակէզ ՚ի սեղանն շինեալ: 29 *Եւ ասեն այր ցընկեր իւր. ո՞ արար զիրս զայս. և յուզէին և քննէին. և ասէին՝ թէ գեդէօն որդի յովասու արար զիրդ զայդ: 30 *Եւ ասեն արք քաղաքին ցյովաս՝ հա՛ն արտաքս զորդին քո՝ և մեռցի. զի կործանեաց զսեղանն բահաղու. և կոտորեաց զանտառն՝ որ զնովաւ: 31 *Եւ ասէ յովաս ցարսն ցյարուցեալս ՚ի վ՟ր նորա. դո՞ւք այժմ դատիցիք վ՟ն բահաղու. և կամ՝ դո՞ւք ապրեցուցանիցէք զնա: որ ջատագովեաց նմա, մեռցի մինչև ցառաւօտ: եթէ Ա՟ծ իցէ, ինքն խնդրեսցէ զվրէժ անձին իւրոյ՝ զի կործանեցին զսեղան ն՟ր: 32 *Եւ կոչեաց զնա յաւուր յայնմիկ յերոբաաղ. և ասէ՝ դատաստան բահաղու. զի կործանեաց զսեղան նորա: 33 *Եւ ա՟մ Մադիամ և ամաղէկ. և ա՟մ որդիքն արևելեայց ժողովեցան ՚ի միասին. և եկին

‖ Ա. Թագ. 12.11.

ելին բանակեցան ՚ի հովիտն յեզրայէ
լի ։ *Եւ հոգի Տ՟ն զօրացոյց զգեդէօն․ 34
և եհար փող եղջերեայ․ և խրախոյս
եբարձ աբիեզեր զհետ ն՟ր ։ *Եւ ար 35
ձակեաց հրեշտակս յասեր․ և ՚ի զա
բուղոն․ և ՚ի նեփթաղիմ․ և ելին ը՟ն
առաջ ն՟ր ։ *Եւ ասէ գեդէօն ց Ա՟Ծ 36
եթէ փրկեսցես ձեռամբ իմով զիսրայէ
ղ՟ի և խօսեցար ։ *Ահա դնեմ զգզաթ 37
մի ասուի ՚ի կալ․ եթէ լինիցի անձրև
՚ի վ՟ր գզաթուն միայնոյ, և ՚ի վերայ
ա՟մ երկրի ցամաքութի, գիտացից ե
թէ փրկեսցես ձեռամբ իմով զի՟Է
ղ՟ի և խօսեցար ։ *Եւ եղև այնպէս և 38
կանխեաց գեդէօն ՚ի վաղիւն անդր․ և
քամեաց զգզաթն․ և էջ ցօղ ՚ի գզա
թէ անտի լի կոնքիւ ջրոյ ։ *Եւ ասէ 39
գեդէօն ց Ա՟Ծ․ մի բարկասցի ցասումն
քո ինձ․ և խօսեցայց դարձեալ միւս
անգամ․ և փորձեցից միւսանգամ գզա
թուն․ և եղիցի միւսանգամ ցամաքու
թի ՚ի վ՟ր գզաթուն միայնոյ․ և ՚ի վ՟ր
ա՟մ երկրի եղիցի անձրև ։ *Եւ արար 40
Ա՟Ծ այնպէս ՚ի գիշերին յայնմիկ․ և ե
ղև ցամաքութի ՚ի վ՟ր գզաթուն միայ
նոյ ։ և ՚ի վ՟ր ա՟մ երկրի եղև անձրև ։

## ԳԼ ։ Է ։

Եւ կանխեաց յերոբոաղ․ նա ինքն 1
է գեդէօն․ և ա՟մ զօրն ընդ նմա․
և բանակեցան առ աղբիւրն արեդայ․
և բանակն մադիամու, և ամաղեկայ՝
էր նոցա ընդ հիւսիսոյ․ ՚ի գաբաա
թամ որ ՚ի հովտի անդ ։ *Եւ ասէ 2
Տ՟ր ցգեդէօն․ բազում է զօրդ՝ որ ընդ
քեզ է․ առ ՚ի չմատնելոյ ինձ զմա
դիամ ՚ի ձեռս դոցա․ գուցէ պարծի
ցի ՚ի վ՟ր իմ ի՟Է և ասիցէ․ թէ ձեռն
իմ փրկեաց զիս ։ *Եւ ասէ Տ՟ր․ խօ 3
սեաց յականջս ժողովրդեանդ․ և ա
սասցես․ ‖ո՞ որ վատասիրտ իցէ՝ դարձ
ցի ։ և դիմեցին ՚ի լեռնէն գաղաա
դու․ և դարձան ՚ի զօրուէն քսան և
երկու հազարք․ և մնացին տասն հա
զարք ։ *Եւ ասէ Տ՟ր ցգեդէօն․ տա 4
կաւին բազում է զօրդ․ իջո՛ զդոսա ՚ի
ջուրն․ և փորձեցից քեզ զդոսա անդ ։
և եղիցի զորմէ ասացից ցքեզ՝ եթէ
դա երթիցէ ընդ քեզ՝ նա երթիցէ ը՟ն
քեզ․ և զամենայնէ զորմէ ասացից՝
թէ դա մի երթիցէ ընդ քեզ․ նա մի
երթիցէ ընդ քեզ ։ *Եւ իջոյց զզօրն 5
՚ի ջուրն ։ և ասէ Տ՟ր ցգեդէօն․ ա՟մ որ
լափիցէ լեզուաւ իւրով ՚ի ջրոյ անտի
իբրև զշուն, կացուսցես զնա ուրոյն ։
և ա՟մ որ անկցի ՚ի վ՟ր ծնկաց իւրոց
ըմպել, կացուսցես զնա առանձինն ։
*Եւ եղև թիւ ամենեցուն՝ որք լա 6

‖2․ Օրէ․ 20․ 5․ 1․ Մակ․ 3․ 56․

փեցին ձեռամբ և լեզուով իւրեանց՝
երեքհարիւր այր․ և մնացորդք ժողո
վրդեանն՝ անկան ՚ի վ՟ր ծնկաց իւր
7 եանց ըմպել զջուր ։ *Եւ ասէ Տէր
ցգեդէօն․ երեքհարիւր արամբքդ՝ որք
լափեցին զջուր՝ փրկեցից զձեզ․ և տաց
զմադիամ ՚ի ձեռս քո ։ և ա՟մ ժողո
վուրդդ՝ երթիցէ այր իւրաքանչիւր
8 ՚ի տեղի իւր ։ *Եւ առին զպաշար
ժողովրդեանն ՚ի ձեռս իւրեանց․ և
զփողս նոցա զեղջերեայս․ և զա՟մ այր
ի՟Է արձակեաց զայր ՚ի բնակութիւն
իւր ։ և զերեքհարիւր արսն եթ կա
լաւ ։ և բանակն մադիամու՝ էին ՚ի
9 ներքոյ ն՟ր ՚ի հովիտն ։ *Եւ եղև ՚ի
գիշերին յայնմիկ, և ասէ ցնա Տ՟ր․ արի
էջ աստի վաղվաղակի ՚ի բանակն․ զի
10 մատնեցի զնա ՚ի ձեռս քո ։ *Ապա թէ
երկնչիցիս դու իջանել․ էջ նախ դու
և պատանեակդ քո փարա ՚ի բանակն ։
11 *Եւ լուիցես եթէ զինչ խօսիցին՝
և ապա զօրասցին ձեռք քո․ և իջցես
՚ի բանակն․ և էջ ինքն և պատանեակն
իւր փարա ընդ նմա ՚ի մասն ինչ յիս
12 ներորդաց բանակին ։ *Եւ մադիամ
և ամաղէկ․ և ա՟մ որդիքն արևելեայց
բանակեալք էին ՚ի ծործորսն․ իբրև
զմարախ բազմութ՟բ․ և ուղտուց ն՟ց
ոչ գոյր թիւ․ այլ էին իբրև զաւազ
13 առ եզերբ ծովու բազմութ՟բ ։ *Եւ
եմուտ գեդէօն ։ և ահա այր պատ
մէր ընկերի իւրում զերազ․ և ասէ
զերազ․ և ահա նկանակ գարեղէն հո
լովեալ ՚ի բանակս մադիամու․ և եկն
մինչև ՚ի խորանն մադիամու․ և եհար
զնա՝ և կործանեաց․ և անկաւ խորանն
14 վերուստ ՚ի վայր ։ *Պատասխանի ետ
ընկերն նորա՝ և ասէ․ ոչ է այն՝ եթէ
ոչ սուրն գեդէօնի որդւոյ յովասու՝
առն իսրայէլացւոյ․ մատնեաց Տ՟ր ՚ի
ձեռս ն՟ր զմադիամ՝ և զա՟մ բանակս ։
15 *Իբրև լուաւ գեդէօն զպատմութի
երազոյն՝ և զմեկնութի նորա․ երկիր
եպագ Տ՟ն․ և դարձաւ անդրէն ՚ի բա
նակն ի՟Է․ և ասէ՝ արիք, զի մատնեաց
Տ՟ր զբանակն մադիամու ՚ի ձեռս մեր ։
16 *Եւ բաժանեաց զերեքհարիւր արսն
յերիս առաջս․ և ետ զփողսն եղջե
րեայս ՚ի ձեռս ամենեցուն՝ և ջահս ՚ի
17 մէջ սափորացն ։ *Եւ ասէ ցնոսա․
ընդ իս հայեսջիք․ և այնպէս արասջիք ։
ահա ես մտանեմ ՚ի մէջ բանակին․ և
եղիցի որպէս ես առնիցեմ, նոյնպէս և
18 դուք արասջիք ։ *Եւ հարից ես զփողն
եղջերեայ․ և ամենեքեան որք ընդ իս
էք՝ հարջիք և դուք զփողսն եղջե
րեայս շուրջ զա՟մ բանակաւն․ և
19 ասասջիք՝ սուրն Տ՟ն և գեդէօնի ։ *Եւ

եմուտ

եմուտ գեդէոն և հարիւր այր ընդ նմա, 'ի կողմն բանակին 'ի սկզբան միջնոյ պահուն. միայն զարթուցանելով զարթուցին զպահապանսն. և հարին զփողսն եղջերեայս. և թօթափեցին զսափորսն որք 'ի ձեռս իւրեանց:

20 * Եւ հարին զփողսն եղջերեայս երեքին առաջքն. և խորտակեցին զսափորսն. և առին ձախու ձեռամբք իւրեանց զջահսն, և աջու ձեռօք իւրեանց զփողսն՝ հարկանել. և աղաղակեցին՝ և ասեն. սուր Տ̃ն և գեդէոնի:

21 * Եւ կացին իւրաքանչիւր առանձինն շուրջ զբանակաւն: և ընթացաւ ա̃մ բանակն՝ փող հարին՝ և փախեան:

22 * Եւ գոչեցին երեքհարիւրեքին փողքն եղջերեայք. ‖ և եդ Տ̃ր զսուր առն յընկեր իւր. և յա̃մ բանակին:

‖ Սաղմ. 82. 10.

23 * Եւ փախեաւ ա̃մ բանակն մինչև ցբեթսետտայ. և միւս գունդն՝ մինչև ցդարն աբէլմաուլայ. և ցտաբէթ: և գոչեաց այր իսրայէլացի, 'ի նեփթաղիմայ. և յասերայ. և յա̃մ մանասէէ. և զհետ մտին մադիամու:

24 * Եւ հրեշտակս արձակեաց գեդէոն յամենայն սահմանս եփրեմայ. և ասէ՝ իջէք յառաջս մադիամու. և կալարուք զկիրճս ջրոցն մինչև ցբեթփարայ և ցյորդանան. և գոչեաց ամենայն այր եփրեմի. և կալան իւրեանց զանցս ջրոցն. մինչև ցբեթփարայ և ցյորդանան:

25 *‖ Եւ կալան զերկուս իշխանսն մադիամու զորէբ. և զզէբ. և սպանին զորէբ 'ի սորորեբայ. և զզէբ՝ սպանին յակեբզիբայ. և հալածեցին զմադիամ. և զգլուխսն որեբայ և զեբայ բերին առ գեդէոն յայնմ կողմանէ յորդանանու:

‖ Սաղմ. 82. 12. Եսայ. 10. 26.

## ԳԼ: Ը:

1 Եւ ասեն ցգեդէոն արք եփրեմի. զինչ է բանդ այդ՝ զոր արարեր ընդ մեզ. զի ոչ կոչեցեր զմեզ յորժամ երթայիր պատերազմիլ ը̃ մադիամու. և վիճէին ը̃ նմա սաստկագոյնս:

2 * Եւ ասէ ցնոսա. մ̃րդ զինչ ինչ արարի իբրև զձեզ. ո̃չ ապաքէն լաւագոյն է ճռաքաղութիւ եփրեմի. քան զկութսն աբիեզերայ:

3 * 'Ի ձեռս ձեր մատնեաց Տ̃ր զիշխանս մադիամու՝ զզորէբ և զզէբ. և զի̃նչ կարացի առնել իբրև զձեզ՝ և ապա դադարեաց ոգի նոցա 'ի նմանէ 'ի խօսիլ ն̃ր զբանս զայս:

4 * Եւ եկն գեդէոն 'ի յորդանան. և էանց ինքն և երեք հարիւր արքն որք ը̃ նմա պարտասեալք և քաղցեալք:

5 * Եւ ասէ ցարսն սոկքովթայ. տո̃ւք աւադիկ հաց 'ի կերակուր զօրուս այսմիկ՝ որ ընդ իս. զի քաղցեալ են. և ես պնդեցայց զհետ զեբէի և սաղմանայ թագաւորացն մադիամու:

6 * Եւ ասեն իշխանքն սոկքովթայ. մի̃ թէ ձեռն զեբէի և սաղմանայ իցէ 'ի ձեռին քում; զի տացուք հաց զօրականիդ քում:

7 * Եւ ասէ գեդէոն. ո̃չ այդպէս. այլ 'ի տալ Տ̃ն զզեբէէ և զսաղմանա 'ի ձեռս իմ. և ես քարշեցից զմարմինս ձեր փշովք անապատի և բորկոնիմաւ:

8 * Եւ ել անտի 'ի փանուէլ. և խօսեցաւ ընդ ն̃ս նոյնպէս. և պատասխանի արարին նմա արք փանուէլայ, զոր օրինակ արարին նմա պատասխանի արք սոկքովթայ:

9 * Եւ խօսեցաւ գեդէոն ը̃ արս փանուէլի՝ և ասէ. 'ի դառնալ իմում այսրէն խաղաղութ̃բ. կործանեցից զաշտարակդ զայդ:

10 * Եւ զեբէի և սաղմանա էին 'ի կարկար. և բանակ ն̃ց ընդ նոսա. իբրև հնգետասան հազար այր ընդ ա̃մ, որք մնացեալ էին յա̃մ բանակէ որդւոցն արևելից. և անկեալք էին հարիւր և քսան հազար արանց սուսերամերկաց:

11 *‖ Եւ ել գեդէոն ընդ ճանապարհս վրանաբնակչացն յարևելից նաբաէի. և հանդէպ նաբեայ. և եհար զբանակն. զի աներ էր բանակն յանհոգս:

‖ Սե. 10. 14.

12 * Եւ փախեան զեբէէ և սաղմանա. և պնդեցաւ զհետ ն̃ց. և ձերբակալ արար զերկուս թագաւորսն մադիամու՝ զզեբէէ և զսաղմանա. և զա̃մ բանակ ն̃ր դղրդեցոյց:

13 * Եւ դարձաւ գեդէոն որդի յովասու 'ի պատերազմէն 'ի զառիվայրէ անտի արեսայ:

14 * Եւ կալաւ զպատանեակ մի յարանց սոկքովթայ. և եհարց զնա. և գրեաց առ ինքն զիշխանսն սոկքովթայ. և զծերս ն̃ր եօթանասուն և եօթն այր:

15 * Եւ եկն գեդէոն առ իշխանսն սոկքովթայ. և ասէ ցնոսա. ահաւասիկ զեբէէ և սաղմանա. վ̃ն որոյ նախատեցիք զիս՝ և ասայիք. մի̃թէ ձեռն զեբէի և սաղմանայ այժմ 'ի ձեռին քում իցէ. զի տացուք հաց արանց քոց նքթելոց:

16 * Եւ էառ զիշխանսն և զծերս քաղաքին. և փուշս յանապատէ և զբորկոնիմն. և քարշեաց նոքօք զարսն սոկքովթայ:

17 * Եւ զաշտարակն փանուէլի կործանեաց. և կոտորեաց զարս քաղաքին:

18 * Եւ ասէ ցզեբէէ և ցսաղմանայ՝ ո̃ւր են արքն՝ զորս կոտորեցիք 'ի թաբօր. և ասեն՝ ո̃ր դու. նոյնպէս և ն̃ք նման քեզ՝ և դու նման նոցա. իբրև զտեսիլ որդւոց թագաւորի:

19 * Եւ ասէ գեդէոն՝ եղբարք իմ և որդիք մօր իմոյ էին՝ և երդուաւ ն̃մ

և ասէ. կենդանի է Տր՛ եթէ կենդա-
նի պահեալ էր ձեր զնս, ոչ սպանա-
նէի զձեզ: 20 *Եւ ասէ ցյեթեր յանդ-
րանիկ իւր. արի, և սպան զդոսա. և
ոչ եհան պատանեակն զսուր իւր՝ զի
երկեաւ՝ քանզի մանուկ էր: 21 *Եւ ա-
սեն զեբէէ և սաղմանա. արի և դու
քեզէն պատահեաց մեզ. զի ըստ առն
և զօրութիւն իւր. և յարեաւ գեդէոն.
‖ և սպան զզեբէէ և զսաղմանա: և
էառ զմանեակսն 'ի պարանոցաց ուղ-
տուց նոցա: 22 *Եւ ասեն արք իղի ցգե-
դէոն. իշխեա մեզ դու՝ և որդի քո. և
որդի որդւոյ քոյ. զի փրկեցեր զմեզ
'ի ձեռաց մադիամու: 23 *Եւ ասէ ցնս
գեդէոն. ոչ իշխեցից ես ձեզ. և ոչ
իշխեսցէ ձեզ որդի իմ. այլ Տր իշխես-
ցէ ձեզ: 24 *Եւ ասէ ցնոսա գեդէոն՝
խնդրեցից 'ի ձէնջ հայցուածս ինչ. և
տուք ինձ՝ առ այր գինտ մի յաւարէ
անտի. զի գինդք ոսկիք էին նց. քան-
զի իսմայէլացիք էին: 25 *Եւ ասեն՝ տա
լով տացուք. և տարածեցին զհան-
դերձս նր. և ընկեցին անդր այր իւրա
քանչիւր զգինտս ոսկիս զաւարի իւրոյ:
26 *Եւ եղև կշիռ գնտացն ոսկեաց՝
զորս խնդրեաց՝ հազար և եօթն հար
իւր սիկղ ոսկւոյ, թող զշուշանունսն
և զմեհեանդս. և զպատականս. և
զծիրանիս. և որինչ 'ի թագաւորսն
մադիամու. և թող զմանեակսն ոսկիս
պարանոցաց ուղտուց նց: 27 *Եւ արար
զայն գեդէոն յեփուտ. և հաստատեաց
զայն 'ի քաղաքի իւրում յեփրայ. և
պոռնկեցաւ ամենայն իէլ զհետ նորա
անդր. և եղև գեդէոնի և տան նր 'ի
գայթագղութիւն: 28 *Եւ վանեցաւ մա
դիամ առաջի որդւոցն իղի՝ և ոչ ևս
յաւելին ամբառնալ զգլուխս իւր-
եանց. և դադարեաց երկիրն ամս քա
ռասուն յաւուրս գեդէոնի: 29 *Եւ
գնաց յերոբոաղ որդի յովասու, և
բնակեցաւ 'ի տան իւրում: 30 *Եւ գե-
դէոնի էին եօթանասուն որդիք ե-
լեալք յերանաց նորա. զի կանայք բա
զումք էին նորա: 31 *Եւ հարճ նորա
որ 'ի սիկիմայ, ծնաւ նմա և նա որդի.
և եդ անուն նմա աբիմելէք: 32 *Եւ մե-
ռաւ գեդէոն որդի յովասու 'ի բար-
ւոք ծերութեան. և թաղեցաւ 'ի գե-
րեզմանի յովասու հօր իւրոյ. յեփրայ
հօրն եզրեայ: 33 *Եւ եղև իբրև մեռաւ
գեդէոն՝ դարձան որդիքն իսրայէլի՝ և
պոռնկեցան զհետ բահաղիմայցն. և
եդին զուխտ իւրեանց ընդ բահաղու
բերիթայ, լինել նոցա նմա յԱծ:
34 *Եւ ոչ յիշեցին որդիքն իղի զՏէր
Ած իւրեանց՝ որ փրկեաց զնոսա յամ
նթ

Սաղմ. …12.

թշնամեաց իւրեանց շուրջանակի:
35 *Եւ ոչ արարին ողորմութիւն ը տանն
յերոբոաղայ՝ որ նա ինքն է գեդէոն.
ըստ ամենայն բարութեանն զոր արար
ընդ իսրայէլի:

## Գլ. Թ.

1 Եւ գնաց աբիմելէք որդի յերոբո-
աղայ 'ի սիկիմ առ եղբարս մօր
իւրոյ. և խօսեցաւ ընդ նոսա. և ընդ
ամ ազգատոհմի տան հօր մօր իւրոյ՝
և ասէ: 2 *Խօսեցարուք յականջս ամ
արանց սիկիմացւոց. ո՞ր լաւ իցէ
ձեզ՝ իշխել ձեզ եօթանասուն արանց
ամ որդւոց յերոբոաղայ, եթէ տի-
րել ձեզ առն միոջ: և յիշեցէք. զի
ոսկր ձեր՝ և մարմին ձեր եմ ես:
3 *Եւ խօսեցան զնմանէ եղբարք մօր
նորա յականջս ամ արանց սիկիմաց-
ւոց. զամենայն բանս զայսոսիկ. և
միտեցաւ սիրտ նոցա զհետ աբիմելէ-
քայ. զի ասացին թէ եղբայր մեր է:
4 *Եւ ետուն նմա եօթանասուն ար-
ծաթոյ 'ի տանէ բահաղու բերիթայ
ուխտին. և վարձեցաւ նովօք աբիմե-
լէք արս սրիկայս և զարհուրեցու-
ցիչս. և գնացին զհետ նր: 5 *Եւ ե-
մուտ 'ի տուն հօր իւրոյ յեփրայ. և կո
տորեաց զեղբարս իւր զորդիսն յերո-
բոաղայ. արս եօթանասուն 'ի վերայ
վիմի միոյ. և մնաց յովաթամ որդի յե-
րոբոաղայ կրտսեր, քանզի թաքեաւ:
6 *Եւ ժողովեցան ամ արք սիկիմաց-
ւոց. և ամ տունն մաալոնայ. և չոգան
թագաւորեցուցին զաբիմելէք 'ի թա
գաւոր. առ կաղնեաւ կոչոյն որ 'ի
սիկիմայ: 7 *Եւ ազդ եղև յովաթա-
մայ. եւ՝ գնաց և եկաց 'ի վերայ գլխոյ
լերինն 'ի գարիզին. ամբարձ զձայն
իւր՝ և լալց. և ասէ ցնս. լուարուք
ինձ արք սիկիմացւոց՝ և լուիցէ ձեզ
Ած: 8 *Գնալով գնացին ծառք օծա-
նել իւրեանց թագաւոր. և ասեն ցձի
թենին. թագաւորեա 'ի վերայ մեր:
9 *Եւ ասէ ցնոսա ձիթենին. թողից
զպարարտութիւն իմ, յորս փառաւորեաց
զիս Ած և մարդիկ. և երթայցեմ իշ-
խել ծառոց: 10 *Եւ ասեն ծառքն ցթզե-
նին. եկ՝ և թագաւորեա՛ 'ի վերայ մեր
11 *Եւ ասէ ցնոսա թզենին. թողեալ
զքաղցրութիւն իմ. և զբերս բարութեան
իմոյ. և երթայցեմ իշխան լինել փայ
տից: 12 *Եւ ասեն ծառքն յորթն. եկ՝
և թագաւորեա՛ 'ի վր մեր: 13 *Եւ ասէ
ցնս որթն. թողեալ զգինի իմ, և զու-
րախութիւն Այ և մարդկան՝ և երթայ
ցեմ իշխան լինել փայտից: 14 *Եւ ա-
սեն ծառքն ցդժնիկն. եկ՝ և թագաւո
րեա՛

ճեայ

րեա՛ 'ի վերայ մեր ։ 15 *Եւ ասէ դժնիկն ցծառս ․ Թէ արդարև օծանիցէք զիս թագաւորել 'ի վերայ ձեր ․ եկա՛յք՝ և ծածկեցարո՛ւք ընդ հովանեաւ իմով․ եթէ ո՛չ ելանիցէ հուր 'ի դժնկէ ատի՛ և կերիցէ զեղևնափայտս լիբանանու ։ 16 *Եւ արդ՝ եթէ ճշմարտութե̃ և բոլանդակութե̃ արարիք ․ և թագաւորեցուցիք զաբիմելէք․ և թէ որպէս արարիք ընդ յերոբաաղ և ընդ տուն նորա ․ և եթէ ըստ հատուցման ձեռին նր̃ արարիք նմա ։ 17 *Որպէս ետ պատերազմ հայր իմ փոխանակ ձեր ․ և ընկէց զանձն իւր յառաջ ․ և ապրեցոյց զձեզ 'ի ձեռաց մադիամու ։ 18 *Եւ դուք յարեայք 'ի վ̃ր տան հօր իմոյ այսօր ․ և կոտորեցիք զորդիս նր̃՝ արս եօթանասուն 'ի վերայ վիմի միոյ ․ և թագաւորեցուցիք զաբիմելէք զորդի աղախնոյ նր̃, 'ի վերայ արանց սիկիմացւոց՝ զի եղբայր ձեր է ։ 19 *Եթէ ճշմարտութե̃ և բոլանդակութե̃ արարիք ընդ յերոբաաղայ և ընդ տան նր̃ յաւուրս յայսմիկ՝ օրհնեսջիք դուք․ և ուրախ լիջիք յաբիմելէք ․ ուրախ լիցի և նա 'ի ձեզ ։ 20 *Ապա թէ ո՛չ ելցէ հուր յաբիմելէքայ ․ և կերիցէ զարս սիկիմացւոց ․ և զտունն մաալոնայ ․ ապա թէ ո՛չ ելցէ հուր յարանց սիկիմացւոց և 'ի տանէն մաալոնայ՝ և կերիցէ զաբիմելէք ։ 21 *Եւ փախեաւ յովաթամ, և գերծաւ ․ և գնաց ընդ ճանապարհն 'ի բերայ ․ և բնակեցաւ անդ յերեսաց աբիմելէքայ եղբօր իւրոյ ։ 22 *Եւ իշխեաց աբիմելէք 'ի վերայ իղ̃ի ամս երիս ։ 23 *Եւ առաքեաց Ա̃ծ ոգի չար 'ի մէջ աբիմելէքայ և 'ի մէջ արանց սիկիմացւոց ․ և արհամարհեցին արք սիկիմացւոց զտունն աբիմելէքայ ։ 24 *Ածել 'ի վերայ նոցա զանիրաւութի̃ եօթանասնից որդւոցն յերոբաաղայ ․ և հատուցանել զարիւն նոցա 'ի վերայ աբիմելէքայ եղբօրն իւրեանց՝ որ կոտորեաց զնոսա ․ և 'ի վերայ արանց սիկիմացւոց՝ զի զօրացուցին զձեռս նր̃ կոտորել զեղբարս իւր ։ 25 *Եւ գործեցին նմա դարան արք սիկիմացւոց 'ի վ̃ր գլխոց լերանց ․ և յափշտակէին զամենեսին՝ որք անցանէին առ նոքօք ընդ ճանապարհն ․ և ազդ եղև աբիմելէքայ ։ 26 *Եւ եկն գաաղ որդի աբեդդայ և եղբարք նր̃ ․ և անցին 'ի սիկիմ ․ և վստահ եղեն 'ի նա արք սիկիմացւոց ։ 27 *Եւ ելին յանդաստանն ․ և կթեցին զայգիս իւրեանց ․ և հարին հնձանս ․ և արարին պարանցիկս ․ և մտին 'ի տուն աստուծոյն իւրեանց ․ և կերին՝ և արբին՝ և անիծին զաբիմելէք ։ 28 *Եւ ասէ գաաղ որդի աբեդդայ՝ ո՞ է աբիմելէք՝ և ո՞ է որդին սիքեմայ՝ զի ծառայեմք նմա ․ ո՛չ նա է որդի յերոբաաղայ՝ և զեբուղ ծառայ իւր՝ ստիկան նր̃ ․ հանդերձ արամբք եմօրայ հօր սիքեմայ․ և զի՞ է զի ծառայիցեմք նմա ։ 29 *Եւ ո՛ տայր զժողովուրդս զայս 'ի ձեռս իմ ․ և փոխէի զաբիմելէք ․ և ասէի ցաբիմելէք՝ բազմացո՛ զզօրս քո՝ և ե՛լ ինձ ։ 30 *Եւ լուաւ զեբուղ՝ իշխան քաղաքին՝ ըզբանս գաաղայ որդւոյ աբեդդայ ․ և սրտմտեցաւ բարկութե̃ ։ 31 *Եւ առաքեաց առ աբիմելէք հրեշտակս պատարագօք՝ և ասէ ․ ահաւասիկ գաաղ որդի աբեդդայ և եղբարք նր̃ եկին 'ի սիկիմ ․ և պաշարեն զքաղաքս 'ի վ̃ր քո ։ 32 *Արդ՝ արի՛ զցայգ դու և զօրդ քո՝ որ ընդ քեզ է ․ և դարանամուտ լեր յանդաստանին ։ 33 *Եւ եղիցի ընդ առաւօտն 'ի ծագել արեգականն , կանխեսցես՝ և հասցես զքաղաքաւ ․ և ահա սա՝ և զօրս որ ընդ սմա է՝ ելանէ առ քեզ ․ և արասցես ընդ սա ո̃ր ինչ գտցէ ձեռն քո ։ 34 *Եւ յարեաւ աբիմելէք և ամենայն զօրն որ ը̃ն նմա զցայգ ․ և մտին 'ի դարանս զսիկիմաւ չորք առաջք ։ 35 *Եւ եղև ընդ առաւօտն ․ ել գաաղ որդի աբեդդայ՝ և եկաց 'ի մուտս դրան քաղաքին ․ և յարեաւ աբիմելէք և ամ̃ զօրն որ ընդ նմա 'ի դարանացն ։ 36 *Եւ ետես գաաղ որդի աբեդդայ զզօրն ․ և ասէ ցզեբուղ , ահաւանիկ զօր իջանէ 'ի գլխոյ լերանց ․ և ասէ ցնա զեբուղ՝ զստուեր լերանցն տեսանես դու իբրև զմարդիկ ։ 37 *Եւ յաւել ևս խօսել գաաղ և ասէ՝ ահաւանիկ զօր իջանէ ը̃ն ծովակողմն առ պորտով երկրին ․ և առաջ մի ել ընդ ճանապարհ կաղնւոյն դիտանողաց ։ 38 *Եւ ասէ ցնա զեբուղ արդ ո՞ւր է բերանքո՝ որ ասէր՝ թէ ով է աբիմելէք , զի ծառայեսցուք նմա ․ ո՛չ աւանիկ այն զօր է՝ զոր դուն աղարտէիր․ արդ ե՛լ՝ և տո՛ւր ընդ նմա պատերազմ ։ 39 *Եւ ել գաաղ առաջի արանցն սիկիմացւոց ․ և մարտեաւ ը̃ն աբիմելէքայ ։ 40 *Եւ հալածեաց զնա աբիմելէք ․ և փախեաւ յերեսաց նր̃ և անկան վիրաւորք բազումք մինչև ցդրունս քաղաքին ։ 41 *Եւ նստաւ աբիմելէք յարիմ ․ և եհան զեբուղ՝ ըզգաաղ և զեղբարս նր̃՝ զի մի՛ բնակեսցին 'ի սիկիմ ։ 42 *Եւ եղև 'ի վաղիւ անդր՝ և ել ժողովուրդն 'ի դաշտն․ և ազդ եղև աբիմելէքայ ։ 43 *Եւ էառ զզօրն՝ և բաժանեաց յերիս առաջս ․ և եմուտ նստաւ 'ի դարան ․ և ետես՝

ահա

ահա զօր ելանէր 'ի քաղաքէ անտի. և յարեաւ 'ի վ(երայ) նց և եհար զնոսա:

44 * Եւ աբիմելէք՝ և գունդքն որք ընդ նմա՝ ճակատեցան՝ և կացին առ դրան քաղաքին. և երկու գունդքն սփռեցան 'ի վ(երայ) ամենեցուն՝ որք յանդաստանսն էին. և հարին զն(ոսա): 45 * Եւ աբիմելէք պատերազմէր ընդ քաղաքին զօրն զայն ողջոյն. և առին զքաղաքն. և զժողովուրդն որ 'ի նմա կոտորեցին. և զքաղաքն կործանեցին՝ և աղով վարեցին: 46 * Եւ լուան ամ(ենայն) արք աշտարակին սիկիմացւոց. և եկին յամրոց տանն բեթէլ բերիթայ: 47 * Եւ ազդ եղև աբիմելէքայ՝ եթէ ժողովեցան ամենայն արք աշտարակին սիկիմացւոց: 48 * Եւ ել աբիմելէք 'ի լեառն սեղմոն. ինքն, և ամ(ենայն) զօրն որ ընդ նմա. և էառ աբիմելէք զտապար 'ի ձեռն իւր. և կոտորեաց բեռն մի փայտի՝ էառ զայն՝ և եդ զայն 'ի վերայ ուսոց իւրոց. և ասէ ցզօրն իւր՝ զինչ տեսանիցէք յիս՝ զոր առնիցեմ, արասջիք և դուք վաղվաղակի իբրև զիս: 49 * Կոտորեցին և նոքա իւրաքանչիւրոք ամենեքին զբեռն մի փայտի՝ և բարձին՝ և գնացին զհետ աբիմելէքայ. և եդին 'ի վ(երայ) ամրոցին. այրեցին 'ի վ(երայ) նց զամրոցն հրով. և մեռան ամ(ենայն) արք աշտարակին սիկիմացւոց. իբրև հազար մի ընդ այր և ընդ կին: 50 * Եւ չոգաւ աբիմելէք 'ի թեբէս. և նստաւ շուրջ զնովաւ. և էառ զնա: 51 * Եւ աշտարակ մի էր հզօր 'ի մէջ քաղաքին. և փախեան անդր ամ(ենայն) արք և կանայք. և ամ(ենայն) գլխաւորք քաղաքին. և փակեցին ընդդէմ իւրեանց. և ելին 'ի տանիս աշտարակին: 52 * Եւ եկն աբիմելէք մինչև ցաշտարակն. և մարտեան ընդ նմա. և մերձեցաւ աբիմելէք 'ի դուռն աշտարակին՝ զի այրեսցէ զնա հրով: 53 * ‖ Եւ ընկէց կին մի բեկոր երկանի 'ի վերայ գլխոյ նր. և մանրեաց զգագաթն աբիմելէքայ: 54 * ‖ Եւ աղաղակեաց վաղվաղակի առ պատանեակն կապարճակիր իւր՝ և ասէ ցնա. մերկեա զսուր քո՝ և սպան զիս. գուցէ ասիցեն թէ կին սպան զնա. և խոցեաց զնա պատանին իւր. և մեռաւ աբիմելէք: 55 * Եւ ետես այր իսրայէլի թէ մեռաւ աբիմելէք. գնացին այր իւրաքանչիւր 'ի տեղի իւր: 56 * Եւ դարձոյց Ա(ստուա)ծ զչարիսն աբիմելէքայ՝ զորս արար հօր իւրում կոտորելով զեօթանասուն եղբարսն իւր: 57 * Եւ զամ(ենայն) չարիսն սիկիմացւոց դարձոյց Ա(ստուա)ծ 'ի գլուխս նոցա. և եկին 'ի վերայ նոցա անէծքն յովաթամայ որդւոյ յերոբաաղայ:

‖2 Թագ. 11.21. ‖1 Թագ. 31.4. 1. Մն. 10.4.

## Գլ. Ժ.

1 Եւ յարեաւ յետ աբիմելէքայ փրկել զիսրայէլ թովղա որդի փուայ. որդի հօր եղբօր նորա. այր յիսաքարայ: և նա բնակէր 'ի սամարիայ. 'ի լերինն եփրեմի: 2 * Եւ դատեաց զիսրայէլ ամս քսան և երիս: և մեռաւ և թաղեցաւ 'ի սամարիայ: 3 * Եւ յարեաւ յետ նր յայիր գաղաադացի. և դատեաց զիսրայէլ ամս քսան և երկուս: 4 * Եւ եղեն նորա որդիք՝ երեսուն և երկու. որք հեծանէին յերեսուն և երկուս յովանակս: և երեսուն և երկու քաղաքք նոցա: և կոչեաց զնս աւանս յայիրայ մինչև ցայսօր՝ որք են 'ի գաղաադ: 5 * Եւ մեռաւ յայիր՝ և թաղեցաւ 'ի կամոն: 6 * Եւ յաւելին որդիքն իսրայէլի առնել չար առաջի Տն. և պաշտեցին զբահաղիմն. և զաստարոթն. և զաստուածս ասորւոց. և զաստուածսն սիդոնայ. և զաստուածս մովաբայ. և զաստուածս որդւոցն ամոնայ. և զաստուածս այլազգեացն. և թողին զՏր. և ոչ ծառայեցին նմա: 7 * Եւ սրտմտեցաւ բարկութբ Տէր իսրայէլի. և մատնեաց զնս 'ի ձեռս այլազգեացն. և 'ի ձեռս որդւոց ամոնայ: 8 * Եւ խախտեցին՝ և խորտակեցին զորդիսն իսրայէլի 'ի ժամանակին յայնմիկ ամս ութուտասն զամ(ենայն) իսրայէլացիս յայնկոյս յորդանանու. յերկրի ամորհացւոց 'ի գաղաադ: 9 * Եւ անցին որդիքն ամոնայ ընդ յորդանան տալ պատերազմ ընդ յուդայ, և ընդ տանն եփրեմայ, և ընդ բենիամինի. և նեղեցան որդիքն իսրայէլի յոյժ: 10 * Եւ աղաղակեցին որդիքն իսրայէլի առ Տր՝ և ասեն. մեղաք քեզ՝ զի թողաք զԱծ մեր՝ և պաշտեցաք զբահաղիմն: 11 * Եւ ասէ Տր ցորդիսն իսրայէլի. ոչ ապաքէն եգիպտացիք և ամորհացիք՝ և որդիք ամոնայ. և մովաբ. և այլազգիք: 12 * Սիդոնացիք՝ և ամաղէկ. և քանան՝ նեղեցին զձեզ. և աղաղակեցիք առ իս՝ և փրկեցի զձեզ 'ի ձեռաց նց: 13 * Եւ դուք թողէք զիս՝ և ծառայեցէք աստուծոց օտարաց. վն այնորիկ ոչ յաւելից փրկել զձեզ: 14 * Երթայք աղաղակեցէք առ աստուածսն. զորս ընտրեցիք ձեզ. և նոքա փրկեսցեն զձեզ 'ի ժամանակի նեղութեան ձերոց: 15 * Եւ ասեն որդիքն իսրայէլի ցՏր. մեղաք. արա դու ընդ մեզ զամ, որ ինչ հաճոյ թուի առաջի քո. բայց Տր միայն ապրեցո զմեզ յաւուր յայսմիկ: 16 * Եւ մերժեցին զաստուածսն օտարոտիս 'ի միջոյ իւրեանց. և պաշտեցին զՏր միայն: և ոչ

հաշտեցաւ ընդ ժողովրդեանն ։ և յո-
գիս ապաստան եղև յաշխատութենէ
իսրայէլի ։ * Եւ ելին որդիքն ամմօնայ· 17
և բանակեցան ՚ի գաղաադ ։ և ելին
որդիքն իսրայէլի, և բանակեցան ՚ի
դիտանոցին ։ * Եւ ասեն իշխանք 18
ժողովրդեանն գաղաադու՝ այր ցըն-
կեր իւր ։ այր որ սկիզբն առնիցէ պա
տերազմիլ ընդ որդիսն ամմօնայ, ե-
ղիցի գլուխ ամենայն բնակչացս գա-
ղաադու ։

## Գլ. ԺԱ.

Եւ յեփթայէ գաղաադացի · էր 1
այր հզօր զօրութբ̅ · և նա որդի
կնոջ պոռնկի · և ծնաւ գաղաադու
զյեփթայէ ։ * Եւ ծնաւ կին գաղաա 2
դու նմա որդիս · և հաստատեցան որ-
դիք կնոջն · և մերժեցին զյեփթայէ ·
և ասեն ցնա · ոչ ժառանգեսցես ՚ի
տան հօր մերոյ · զի որդի կնոջ պոռն
կի ես դու ։ * Եւ փախեաւ յեփթայէ 3
յերեսաց եղբարց իւրոց · և բնակե-
ցաւ յերկիր ՚ի տովբ · և ժողովէին առ
յեփթայէ արք սրիկայք · և ելանէին
ընդ նմա ։ * Եւ եղև յետ աւուրց · և 4
պատերազմեցան որդիքն ամմօնայ ը̅
իէ̅լացիսն ։ * Եւ եղև յորժամ ետուն 5
պատերազմ որդիքն ամմօնայ ը̅ իէ̅լի ։
չոգան ծերք գաղաադու առնուլ
զյեփթայէ յերկրէն տովբայ ։ * Եւ 6
ասեն ցյեփթայէ · եկ՝ և եղիցիս մեզ
՚ի զօրավար · և տացուք պատերազմ
ընդ որդիսն ամմօնայ ։ * Եւ ասէ յեփ- 7
թայէ ցծերս գաղաադու ։ ‖ ո՞չ ապա
քէն դուք ատեցէք զիս · և հանէք ՚ի
տանէ հօր իմոյ · և արձակեցէք զիս ՚ի
ձէնջ · և արդ զի՞ եկիք առ իս յորժամ
նեղեցայք ։ * Եւ ասեն ծերքն գա 8
ղաադու ցյեփթայէ · ոչ այդպէս է ։
այլ եկաք առ քեզ · և երթիցես ընդ
մեզ՝ և տացուք պատերազմ ընդ որ-
դիսն ամմօնայ և եղիցիս մեզ ՚ի գլուխ
ա̅մ բնակչացս գաղաադու ։ * Եւ ասէ 9
յեփթայէ ցծերսն գաղաադու · եթէ
դարձուցանիցէք զիս պատերազմիլ
ընդ որդիսն ամմօնայ, և մատնեսցէ
զնա Տր̅ առաջի իմ, ես եղէ՞ց իշխան ։
* Եւ ասեն ծերքն գաղաադու ցյեփ- 10
թայէ · Տր̅ կացցէ լսող ՚ի միջի մերում ·
եթէ ոչ ըստ բանիդ քում նոյնպէս և
արասցուք ։ * Եւ գնաց յեփթայէ ընդ 11
ծերս գաղաադու · և կացուցին զնա
ժողովուրդն ՚ի վե̅ր իւրեանց գլուխ,
և առաջնորդ ։ և խօսեցաւ յեփթայէ
զա̅մ զբանս իւր առաջի Տն̅ ՚ի մասե-
փայ ։ * Եւ առաքեաց յեփթայէ հրեշ 12
տակս առ թագաւոր որդւոցն ամմօ-

Ծննդ. 26.27.

նայ՝ և ասէ · զի՞ կայ իմ, և քո · զի ե-
կեալ ես առ իս պատերազմիլ յերկրի
13 իմում ։ * Եւ ասէ արքայ որդւոցն ամ-
մօնայ ցհրեշտակսն յեփթայեայ · ‖ ըն-
դէ՞ր էառ իէ̅լ զերկիր իմ յելանելն իւր
ում՝ յեգիպտոսէ · յառնոնայ մինչև
ցյաբոկ · և մինչև ցյորդանան · և արդ
դարձո՛ զնա առ իս խաղաղութբ̅՝ և
գնացից ։ և դարձան հրեշտակքն առ
14 յեփթայէ ։ * Եւ յաւել ևս յեփթայէ
առաքել հրեշտակս առ արքայ որդ-
15 ւոցն ամմօնայ ։ * Եւ ասէ ցնա · այս-
պէս ասէ իէ̅լ, և յեփթայէ · ոչ էառ
իէ̅լ զերկիրն մովաբայ · և զերկիր
16 որդւոցն ամմօնայ ։ * Այլ յելանել
իւրեանց յեգիպտոսէ, գնաց իէ̅լ ընդ
անապատն մինչև ցծովն կարմիր · և
17 եկն մինչև ցկադէս ։ * ‖ Եւ առաքեաց
իէ̅լ հրեշտակս առ արքայ եդովմայ՝ և
ասէ · թո՛ղ անցից ընդ երկիր քո ։ և ո՛չ
անսայ արքայն եդովմայ ։ և առաքեաց
առ արքայն մովաբու՝ և ո՛չ կամեցաւ ։
18 և նստաւ իէ̅լ ՚ի կադէս ։ * Եւ շրջե-
ցաւ ը̅ անապատն · և պատեցաւ զերկ
րաւն եդովմայ · և զերկրաւն մովաբայ ·
և եկն առ արևելիւք երկրին մովա-
բու · և բանակեցաւ յայնկոյս առնո-
նայ · ‖ և ո՛չ մտին ՚ի սահմանս մովա-
բու · քանզի առնոն էր սահման մովա
19 բու ։ * Եւ առաքեաց իէ̅լ հրեշտակս
առ սեհոն արքայ ամորհացւոց՝ թա-
գաւոր եսեբոնայ և ամորհացւոց՝ և
ասէ ցնա իէ̅լ · թո՛ղ անցից ընդ երկիր
20 քո մինչև ցտեղի իմ ։ * Եւ ո՛չ կամե-
ցաւ սեհոն զիէ̅լ անցանել ընդ սահ-
մանս իւր ։ և ժողովեաց սեհոն զա̅մ
ժողովուրդ իւր · և բանակեցաւ յաս
սայ ։ և ետ պատերազմ ընդ իէ̅լի ։
21 * Եւ մատնեաց Տր̅ Ա̅ծ իէ̅լի զսեհոն՝
և զա̅մ ազգն նորա ՚ի ձեռս իէ̅լի · և
եհար զնս̅ · և ժառանգեաց իէ̅լ զեր-
կիր ամորհացւոցն՝ բնակելոյն յերկ-
22 րին յայնմիկ ։ * Եւ ժառանգեաց իէ̅լ
զա̅մ սահմանս ամորհացւոց յառնո-
նայ մինչև ցյաբոկ · և յանապատէն
23 մինչև ցյորդանան ։ * Եւ արդ Տէր
Ա̅ծ իէ̅լի եբարձ զամորհացին յերե-
սաց ժողովրդեան իւրոյ իէ̅լի · և դու
24 ժառանգիցես զնա ։ * Ոչ ապաքէն զոր
ժառանգեցոյց քեզ քամովս աստուա-
ծն քո՝ զայն ժառանգեսցես · և զա̅մ
զոր ժառանգեցոյց Տր̅ Ա̅ծ մեր յերե-
սաց ձերոց՝ զայն մեք ժառանգեսցուք ։
25 * ‖ Իսկ արդ՝ միթէ լա՞ւ ինչ իցես դու
քան զբաղակ որդի սեփովրայ զարքայն
մովաբու · միթէ մարտի՞ց մարտեաւ
ընդ իսրայէլի ։ կամ պատերազմաւ
26 պատերազմեցա՞ւ ընդ նոսա ։ * ՚Ի բնա

կելն

‖ Թուոց 21.13. և 24.

‖ Թուոց 20.14.

‖ Թուոց 21.13.

‖ Թուոց 22.2.

կին իւր յեսեբօն և՚ի դստերս նր՟․ և
յարոեր և՚ի դստերս նր՟․ և յամ՟ քա_
ղաքս՝ որ առ եզերբ յորդանանու․
ամս երեքհարիւր։ զի՞ է՝ զի ոչ թափե
ցին զնոսա ՚ի ժամանակին յայնմիկ։
27 *Եւ՛ ես ոչ ինչ մեղայ քեզ․ և դու
առնես ընդ իս զչարութի՟ տալ ընդ իս
պատերազմ։ դատեսցէ Տր՟՝ որ դա_
տելոցն է՝ այսօր ՚ի մէջ որդւոցն իղի
և՚ի մէջ որդւոցն ամմոնայ։ 28 *Եւ՛ ոչ
անսաց արքայ որդւոցն ամմոնայ բա_
նիցն յեփթայեայ՝ զորս առաքեաց
առ նա։ 29 *Եւ՛ եղև ՚ի վ՟ր յեփթայեայ
հոգի Տն՟․ և էանց ընդ գաղաադ․ և
ընդ մանասէ․ և էանց ընդ դիտա_
նոցսն գաղաադու․ և՚ի դիտանոցէն
գաղաադու յայնկոյս որդւոցն ամմո_
նայ։ 30 *Եւ՛ ուխտեաց յեփթայէ ուխտ
Տն՟՝ և ասէ․ եթէ մատնելով մատ_
նեսցես զորդիսն ամմոնայ ՚ի ձեռս իմ։
31 *Եւ՛ եղիցի որ ելանելով ելանիցէ ՚ի
դրանց տան իմոյ ընդառաջ իմ՟ ի դառ
նալ իմում խաղաղութ՟ե՟ յորդւոցն
ամմոնայ, եղիցի՝ զի մատուցից զնա
Տն՟ յողջակէզ։ 32 *Եւ՛ էանց յեփթայէ
առ որդիսն ամմոնայ պատերազմիլ ը՟
նո՟։ և մատնեաց զնո՟ Տր՟ ՚ի ձեռս նորա։
33 *Եւ՛ եհար զնո՟․ յարոերայ մինչև ՚ի
մուտս սեմենիթայ․ քսան քաղաքք․
մինչև ցաբէլ այգեստանեացն՝ հար_
ուածս մեծամեծս յոյժ։ և վանեցան
որդիքն ամմոնայ յերեսաց որդւոցն
իղի։ 34 *Եւ՛ եկն յեփթայէ ՚ի մասե_
փայ ՚ի տուն իւր։ և ահա դուստր իւր
ելանէր ընդ առաջ նորա թմբկօք և
պարուք։ և նա էր միամօր սիրելի նր՟․
և ոչ գոյր նորա բայ՚ի նմանէ ուստր
կամ դուստր։ 35 *Եւ եղև իբրև ետես
զնա՝ պատառեաց զհանդերձս իւր՝ և
ասէ․ վա՜յ է ինձ դուստր իմ․ ընկճե_
ցեր զիս․ խոչընդակն եղեր ինձ․ զի
ես բացի զբերան իմ վ՟ս քո առ Տէր․
և ոչ կարացից դարձուցանել։ 36 *Եւ՛
ասէ ցնա․ եթէ վ՟ս իմ բացեր զբե_
րան քո առ Տր՟, արա՛ զիս որպէս ել ՚ի
բերանոյ քումմէ․ փոխանակ զի արար
քեզ Տր՟ վրէժխնդրութի՟ ՚ի թշնա_
մեաց քոց յորդւոցն ամմոնայ։ 37 *Եւ
ասէ ցհայր իւր․ արա՛ ինձ զբանս զայս․
թողացո՛ ինձ զերկուս ամիսս․ և եր_
թայց՝ շրջեցայց ընդ լերինս․ և լացից
զկուսութիս իմ՟․ ես, և ընկերք իմ։
38 *Եւ՛ ասէ ցնա՝ երթ։ և արձակեաց
զնա զերկուս ամիսս։ և չոգա՛ ինքն և
ընկերք իւր․ և ելաց զկուսութիւն իւր
՚ի վ՟ր լերանց։ 39 *Եւ՛ եղև յետ կատարե
լոյ երկուց ամսոցն, դարձաւ առ հայր
իւր։ և արար նմա զուխտն՝ զոր ուխ
տեաց։ և նա ոչ գիտէր զայր։ և եղև
՚ի կրօնս ՚ի մէջ իսրայէլի։ 40 *Աւուրց
յաւուրս ժողովէին դստերք իղի,
ողբալ զդուստրն յեփթայեայ գաղաա
դացւոյ չորս աւուրս ՚ի տարւոջ։

## ԳԼ։ ԺԲ։

1 Եւ՛ ժողովեցան որդիքն եփրեմի․
և եկին ՚ի սեփենայ․ և ասեն
ցյեփթայէ․ զի՞ է՝ զի ելեր պատերազ
միլ ընդ որդիսն ամմոնայ․ և զմեզ ոչ
կոչեցեր երթալ ընդ քեզ։ արդ այրես
ցուք հրով զտունդ քո ՚ի վերայ քո։
2 *Եւ՛ ասէ ցնոսա յեփթայէ՝ այր զր_
կեալ էի ես․ և ժողովուրդ իմ․ և
որդիք ամմոնայ տառապեցուցանէին
զիս յոյժ․ և բողոք արկի առ ձեզ․ և
ոչ փրկեցիք զիս ՚ի ձեռաց նց՟։ 3 *Եւ՛
տեսի, զի ոչ ոք էր որ փրկէր․ և եդի
զանձն իմ ՚ի ձեռին իմում․ և անցի
առ որդիսն ամմոնայ․ և մատնեաց
զնո՟ Տր՟ ՚ի ձեռս իմ։ և արդ ընդէ՞ր ե_
լիք առ իս յաւուր յայսմիկ մարտնչիլ
ընդ իս։ 4 *Եւ՛ ժողովեաց յեփթայէ
զամ՟ արս գաղաադու․ և տայր պա_
տերազմ ընդ եփրեմի։ և հարին արք
գաղաադու զեփրեմ․ զի ասացին ապ
րեալքն եփրեմի, թէ դուք գաղաա_
դացիք ՚ի մէջ եփրեմի և ՚ի մէջ մանա
սէի էք։ 5 *Եւ՛ կալաւ գաղաադ զկիրճս
յորդանանու զեփրեմի։ և եղև՝ իբրև
ասացին ապրեալքն եփրեմայ, թէ
թո՛ղ անցցուք․ ասեն ցնո՟ արք գաղաա
դու․ մի թէ և դո՞ւք յեփրեմէ իցէք։
և ասեն, չեմք ՚ի նոցանէ։ 6 *Եւ՛ ասեն
ցնո՟, տո՛ւք մեզ նշան ինչ․ և ասացէք
հա՛սկ հա՛սկ։ և ոչ յաջողեցան խօսիլ
այնպէս։ և կալան՝ և կոտորեցին զնո՟
յանցս յորդանանու։ և անկան ՚ի ժա
մանակին յայնմիկ յեփրեմէ քառա_
սուն և երկու հազարք։ 7 *Եւ դատեաց
յեփթայէ զիղի ամս վեց՝ և մեռաւ
յեփթայէ գաղաադացի՝ և թաղե_
ցաւ ՚ի քաղաքի իւրում ՚ի գաղաադ։
8 *Եւ՛ դատեաց յետ նր՟ զիղի եսեբօն
՚ի բեթղէհեմէ։ 9 *Եւ՛ եղեն նր՟ ուս_
տերք երեսուն․ և դստերք երեսուն
տուեալք արտաքս։ և երեսուն կին
էած ուստերաց իւրոց արտաքուստ։
և դատեաց զիղի ամս եօթն։ 10 *Եւ
մեռաւ եսեբօն՝ և թաղեցաւ ՚ի բեթ
ղէհէմ։ 11 *Եւ՛ դատեաց յետ նր՟ զիղի՝
էլօն զաբուղոնացի ամս տասն։ 12 *Եւ՛
մեռաւ էլօն զաբուղոնացի․ և թաղե
ցաւ յէլիմ․ յերկրին զաբուղոնի։
13 *Եւ՛ դատեաց յետ նր՟ զիղի, աբդօն
որդի էլլէլայ փարաթոնացի։ 14 *Եւ՛
եղեն նորա որդիք քառասուն՝ և երե

սուն

սուն որդիք որդւոց նորա. որք հեծանէին յեօթանասուն յաւանակս. և դատեաց զԻէլ ամս ութ: 15 * Եւ մեռաւ աբդոն որդի Ելլէքայ փարաթոնացի. և թաղեցաւ յեփրաթոն. յերկրի եփրեմայ 'ի լերին ամաղեկայ:

## ԳԼ. ԺԳ.

Վեր. 10,6.

1 Եւ յաւելին որդիքն Իսրայելի առնել չար առաջի Տն. և մատնեաց զնոսա Տր 'ի ձեռս այլազգեացն ամս քառասուն: 2 * Եւ եղև այր մի 'ի սարաայ 'ի ցեղէ դանայ. և անուն նր մանուէ: և կին նորա ամուլ էր՝ և ոչ ծնանէր: 3 * Եւ երևեցաւ հրեշտակ Տն կնոջն. և ասէ ցնա. ահաւադիկ դու ամուլ ես. և ոչ է քո ծնեալ. և յղասցիս՝ և ծնցիս որդի: 4 * Արդ զգոյշ լեր. զուցէ ըմպիցես զգինի՝ և զօղի. և մի ուտիցես զամ զանմբ: 5 * Զի ահա յղասցիս դու. և ծնցիս որդի. և երկաթ մի ելցէ 'ի գլուխ նորա. զի ուխտաւոր Այ եղիցի մանուկն անդստին յորովայնէ. և նա սկսցի փրկել զԻսրայէլ 'ի ձեռաց փղշտացւոց: 6 * Եւ եմուտ կինն՝ և ասէ ցայր իւր. եթէ այր Այ եկն առ իս. և տեսիլ նր իբրև զտեսիլ հրեշտակի Այ՝ երևելի յոյժ. և հարցի ցնա՝ թէ ուստի ես. և զանուն իւր ոչ պատմեաց ինձ: 7 * Եւ ասէ ցիս. ահա յղասցիս դու. և ծնցիս որդի: և արդ մի ըմպիցես զգինի և զօղի. և մի ուտիցես զամ անմբ: զի ուխտաւոր Այ եղիցի մանուկն անդստին յորովայնէ մօր իւրոյ մինչև ցօր մահուան իւրոյ: 8 * Եւ աղաչեաց մանուէ զՏր՝ և ասէ. յիս Տր. այրն Այ՝ զոր առաքեցեր առ մեզ, եկեսցէ դարձեալ առ մեզ՝ և լուսաւորեսցէ զմեզ. թէ զինչ արասցուք մանկանն՝ որ ծնանիցի: 9 * Եւ լուաւ Այ ձայնի մանուէի: և եկն հրեշտակն Այ միւս անգամ առ կինն նորա մինչդեռ նստէր յանդի. և մանուէ այր նորա չէր առ նմա: 10 * Եւ փութացաւ կինն՝ և ընթացեալ պատմեաց առն իւրում, և ասէ ցնա: ահա երևեցաւ ինձ այրն՝ որ եկն առ իս յաւուր յայնմիկ: 11 * Եւ յարեաւ գնաց մանուէ զհետ կնոջ իւրոյ. և եկն առ այրն. և ասէ ցնա. եթէ դու իցես այրն, որ խօսեցար ընդ կնոջն: և ասէ հրեշտակն. Ես եմ: 12 * Եւ ասէ մանուէ: արդ գալով չափ բանին քոյոյ. զինչ լինիցին իրաւունք մանկանն՝ և գործք նորա: 13 * Եւ ասէ հրեշտակն Տն ցմանուէ. յամենայնէ զոր ասացի ցկինդ՝ զգոյշ լինիցի: 14 * Յամէ՝ որ ելանէ յորթոյ՝ մի կերիցէ. և զգինի և զօղի մի արբցէ. և զամ անսբ մի կերիցէ. յամէ զոր պատուիրեցի նմա՝ զգոյշ լինիցի: 15 * Եւ ասէ մանուէ ցհրեշտակն. թող բռնադատեսցուք զքեզ. և արասցուք առաջի քո ուլ մի յայծեաց: 16 * Եւ ասէ հրեշտակն Տն ցմանուէ: եթէ բռնադատեսցես զիս՝ ոչ կերայց 'ի հացից քոց. և եթէ արասցես ողջակէզ՝ Տն մատուսցես զնա: զի ոչ գիտաց մանուէ թէ հրեշտակ Տն իցէ: 17 * Եւ ասէ մանուէ ցհրեշտակն Տն զի՞նչ անուն է քեզ. զի յոր ժամ եկեսցէ բանն քո՝ փառաւոր արասցուք զքեզ: 18 * Եւ ասէ ցնա հրեշտակն Տն. զի՞ հարցանես զանուանէ իմմէ. և նա է սքանչելի:

Ծննդ. 16. 11. Ա. Թագ. 1. 20. Ղուկ. 1. 31. Թուոց 6. 3. և 4. Ծննդ. 32. 29.

19 * Եւ էառ մանուէ զուլն այծեաց զզոհն. և մատոյց 'ի վերայ վիմին՝ Տն սքանչելարարի: և մանուէ և կին նր հայէին: 20 * Եւ եղև ընդ ամբառնալ բոցոյն 'ի վերուստ 'ի սեղանոյն յերկինս. ամբարձաւ և հրեշտակն Տն բոցով սեղանոյն. և մանուէ և կին նր հայէին: և անկան 'ի վերայ երեսաց իւրեանց յերկիր: 21 * Եւ ոչ ևս յաւել երևել հրեշտակն Տն մանուէի և կնոջ նորա. յայնժամ գիտաց մանուէ թէ հրեշտակ Տն է: 22 * Եւ ասէ մանուէ ցկինն իւր. մահու մեռանիցիմք՝ 23 զի զԱծ տեսաք: * Եւ ասէ ցնա կին նորա. եթէ կամեցեալ էր Տն սպանանել զմեզ, ոչ ընդունէր 'ի ձեռաց մերոց զողջակէզն և զզոհն. և ոչ լուսաւորէր մեզ զայն ամ ընդ ժամանակս ժամանակս. և ոչ լսելի առնէր մեզ զայն: 24 * Եւ ծնաւ կինն որդի. և կոչեաց զանուն նր սամփսոն. և աճեաց մանուկն. և օրհնեաց զնա Տր: 25 * Եւ սկսաւ Հոգի Տն շրջել ընդ նմա 'ի բանակին դանայ. 'ի մէջ սարաայ և 'ի մէջ եսթաւուղայ:

## ԳԼ. ԺԴ.

1 Եւ էջ սամփսոն 'ի թամնաթայ. և ետես զկին մի 'ի թամնաթայ 'ի դստերացն այլազգեաց. և հաճոյ 2 թուեցաւ առաջի նր: * Եւ ել պատմեաց հօր իւրում և մօր՝ և ասէ: կին մի տեսի 'ի թամնաթայ 'ի դստերացն այլազգեաց. և արդ առէք զնա ինձ 3 կնութե: * Ասեն ցնա հայր և մայր իւր. մի թէ ո՞չ գուցէ 'ի դստերաց եղբարց քոց. և յամ ժողովրդեան իմում կին. զի երթիցես դու առնուլ զկին յայլազգեաց անթլփատից: և ասէ սամփսոն ցհայր իւր. զնա՛ առ ինձ. զի նա հաճոյ է աչաց իմոց:

* Եւ

4 *Եւ հայրն նր և մայրն նր ոչ գիտացին թէ 'ի Տէ է. զի զհատուցումն խնդրիցէ նա յայլազգեացն. և 'ի ժամանակին յայնմիկ այլազգիքն տիրէին իՂի։ 5 *Եւ էջ սամփսոն՝ և հայր նորա և մայր իւր 'ի թամնաթայ։ և խոտորեցաւ սամփսոն յայգեստանն թամնաթայ. և ահա կորիւն մի առիւծու գոչեաց ընդդէմ նորա ։ 6 *Եւ յաջողեցաւ 'ի վր նր Հոգի ՏՆ. և ձեղքեաց զնա իբրև զուլ մի այծեաց։ և ոչ ինչ գոյր 'ի ձեռին նորա։ և ոչ պատմեաց հօր իւրում և մօր իւրում, զոր արար։ 7 *Եւ իջին՝ խօսեցան ընդ կնոջն ։ և հաճոյ թուեցաւ առաջի սամփսոնի։ 8 *Եւ դարձաւ յետ աւուրց առնուլ զնա. և խոտորեցաւ տեսանել զգէշ առիւծուն . և ահա գունդ մեղուաց 'ի բերան առիւծուն. և մեղր ։ 9 *Եւ էառ զայն 'ի բերան իւր. և երթալով երթայր՝ և ուտէր ։ չոգաւ առ հայր իւր և առ մայր իւր. և ետ նոցա՝ և կերին. և ոչ պատմեաց նց՝ թէ 'ի բերանոյ առիւծուն եհան զմեղրն ։ 10 *Եւ էջ հայր նր առ կինն. և արար անդ սամփսոնի հարսանիս զեօթն օր։ զի այնպէս առնէին երիտասարդք ։ 11 *Եւ եղև 'ի զարհուրել նց 'ի նմանէ. կացուցին առ նա ընկերս երեսուն . և էին ընդ նմա ։ 12 *Եւ ասէ ցնս սամփսոն. արկից ձեզ առասպել. եթէ առեղծանելով առեղծանիցէք զնա ինձ զեօթն օր խրախութեանս՝ և գտանիցէք՝ տաց ձեզ երեսուն պատառակալս, և երեսուն պատմուճանս հանդերձից ։ 13 *Ապա թէ ոչ կարիցէք առեղծանել ինձ. տաջիք դուք ինձ երեսուն պատառակալս և երեսուն պատմուճանս հանդերձից ։ և ասեն ցնա՝ արկ մեզ զառասպելն քո. և լուիցուք զնա ։ 14 *Եւ ասէ ցնոսա ։ 'ի կերչէ ել կերակուր. և 'ի հզօրէ ել քաղցր։ և ոչ կարացին առեղծանել զառասպելն զերիս աւուրս ։ 15 *Եւ եղև յաւուրն չորրորդի. և ասեն ցկինն սամփսոնի։ պատրեա զայր քո՝ և պատմեսցէ քեզ զառասպելն. գուցէ այրիցեմք զքեզ՝ և զտուն հօր քո։ թէ աղքատացուցանել կոչեցեր զմեզ այսր ։ 16 *Եւ ելաց կինն սամփսոնի առ նմա՝ և ասէ ցնա . ատեցեր զիս՝ և ոչ սիրեցեր զիս. զի զառասպելն զոր արկեր որդւոց ժողովրդեան իմոյ՝ ինձ ոչ պատմեցեր ։ և ասէ ցնա սամփսոն. ահա հօր և մօր իմոյ ոչ պատմեցի. և արդ քեզ պատմեցի՞մ։ 17 *Եւ ելաց առ նա զեօթն օր՝ յորս էր խրախութիւնն։ և եղև յաւուրն եօթներորդի՝ պատմեաց նմա՝ քանզի

Դ.Ի.Է.

թախանձեաց զնա ։ և նա պատմեաց որդւոց ազգին իւրոյ ։ 18 *Եւ ասեն ցնա արք քաղաքին յաւուրն եօթներորդի՝ յառաջ քան զմտանել արեգականն ։ զի՞նչ քաղցրագոյն քան զմեղր. կամ զի՞նչ հզօրագոյն քան զառիւծ ։ և ասէ ցնս սամփսոն ։ եթէ ոչ ձնչեալ էր զերինջն իմ. ոչ գտանէիք զառասպելն իմ ։ 19 *Եւ յաջողեցաւ 'ի վերայ նր Հոգի ՏՆ և էջ յասկաղոն. և եհար անդ արս երեսուն ։ և էառ՝ և ետ ըզ պատմուճանսն առեղծանելեաց առասպելին ։ և բարկացաւ սրտմտութբ սամփսոն. և ել 'ի տուն հօր իւրոյ ։ 20 *Եւ ամուսնացաւ կինն սամփսոնի ընդ հացկերոյթն նր՝ որ էր նր ընկեր ։

էէ։ ԺԵ դ...

## ԳԼ: ԺԵ:

1 Եւ եղև յետ աւուրց՝ յաւուրս հնձոց ցորենոյ, այց արար սամփսոն կնոջ իւրում. ածեալ զուլ մի յայծեաց։ և ասէ՝ մտից առ կին իմ 'ի սենեակ . և ոչ եթող զնա հայրն նորա մտանել առ նա ։ 2 *Եւ ասէ հայրն նր. ասելով ասացի՝ թէ ատեցեր զնա. և ետու զնա ընկերի քում. ոչ ապաքէն քոյր նորա կրտսեր լաւագոյն է քան զնա . եղիցի սա քեզ փոխանակ նր ։ 3 *Եւ ասէ սամփսոն. անպարտ եմ ես միանգամայն յայլազգեաց. եթէ արարից ես ընդ դոսա չարութի ։ 4 *Եւ գնաց սամփսոն. և կալաւ երեքհարիւր աղուէսս . և էառ ջահս՝ և կապեաց զնոսա ընդ միմեանս ձետ ընդ ձետ. և եդ զջահսն 'ի մէջ երկուց ձետոյն. և կապեաց 'ի միջոյին զջահսն ։ 5 *Եւ ելոյց հուր 'ի ջահսն . և արձակեաց յոհ այլազգեացն . և այրեաց զորանն, և զյառաջագոյն հնձեալսն 'ի բարդից մինչև ցկանգնաւորն . և մինչև ցայգիս և ցձիթենիս ։ 6 *Եւ ասեն այլազգիքն . ո՞ արար զայս ։ և ասեն՝ սամփսոն փեսայ թամնացւոյն։ զի եհան զկին նորա՝ և ետ ընկերի նր։ և ելին այլազգիքն՝ և այրեցին զտուն հօր նորա՝ և զկինն և զհայր նր հրով ։ 7 *Եւ ասէ սամփսոն . եթէ դոյն չափ ես առնիցէք . սակայն ոչ հանգեայց. այլ զվրէժ իմ յիւրաքանչիւր ումեք 'ի ձէնջ խնդրեցից ։ 8 *Եւ եհար զնս 'ի սրունից մինչև ցերանս հարուածս մեծամեծս։ և էջ՝ և բնակեցաւ առ հեղեղատաւն յայրին եւտեմայ ։ 9 *Եւ ելին այլազգիքն . և բանակեցան զյուդայիւ . 10 և անկան զելքեաւ ։ *Եւ ասեն ցնոսա այր յուդայ. ընդէ՞ր ելէք 'ի վր իմ ։ և ասեն այլազգիքն . կապել զսամփսոն ելաք՝ և առնել ընդ

նմա՝

նա՝ զոր օրինակ արար ընդ մեզ ։ 11 *Եւ իջին երեք հազարք արանց յուդայ 'ի ծագ վիմին եռեմայ ․ եւ ասեն ցսամփսոն ․ ոչ գիտես զի իշխեն մեզ այլազգիքն ․ եւ ընդէր արարեր զայդ ընդ մեզ ։ եւ ասէ ցնս սամփսոն ․ որպէս արարին ընդ իս , նոյնպէս արարի ընդ նոսա ։ 12 *Եւ ասեն ցնա ․ կապել զքեզ իջաք ․ եւ մատնել 'ի ձեռս այլազգեացն ։ եւ ասէ ցնոսա սամփսոն ․ երդուարուք ինձ դուք՝ չսպանանել զիս ։ եւ տուք զիս ցնս ․ եւ դուք մի՛ երբեք պատահիցիք ինձ ։ 13 *Եւ երդուեան նմա՝ եւ ասեն ․ ոչ ․ այլ կապելով կապեսցուք զքեզ ․ եւ տացուք 'ի ձեռս նց ․ բայց մահու ոչ սպանցուք զքեզ ։ եւ կապեցին զնա երկուք կարօլք նորովք ․ եւ հանին զնա 'ի վիմէն ։ 14 *Եւ եկն մինչեւ ցծնօտն ։ եւ այլազգիքն աղաղակեցին՝ եւ ընթացան ընդդէմ նր ։ եւ յաջողեցաւ 'ի վերայ նորա հոգի Տն ․ եւ եղեն կարօլքն 'ի բազուկս նր իբրեւ զխծուծ՝ յորժամ 'ի հուր հոտոտիցի ․ եւ հալեցան կապանքն 'ի բազկաց նորա ։ 15 *Եւ եգիտ ծնօտ մի իշոյ ընկեցեալ ․ ձգեաց զձեռն իւր՝ եւ էառ զնա ․ եւ եհար նովաւ հազար այր ։ 16 *Եւ ասէ սամփսոն ․ ծնօտիւ իշոյ ջնջելով ջնջեցից զնոսա ․ զի ծնօտիւ իշոյ կոտորեցի հազար այր ։ 17 *Եւ եղեւ իբրեւ կատարեաց զխօսիլն ․ ընկեց զծնօտն 'ի ձեռանէ իւրմէ ․ եւ կոչեաց զտեղին կոտորած ծնօտի ։ 18 *Եւ ծարաւեցաւ յոյժ ․ եւ աղաղակեաց առ Տր՝ եւ ասէ ։ դու յաջողեցեր ձեռամբ ծառայի քոյ զփրկութիւն զայս մեծ ։ եւ արդ մեռանիցիմ 'ի ծարաւոյ ․ եւ անկանիցիմ 'ի ձեռս անթլփատից ։ 19 *Եւ եբաց Տր զծակ ծնօտին ․ եւ ել 'ի նմանէ ջուր ․ եւ եարբ ․ եւ դարձաւ ոգի իւր առ ինքն՝ եւ զօրացաւ ։ վասն այնորիկ կոչեաց զանուն նր աղբիւր անուանեալ ծնօտի մինչեւ ցայսօր ։ 20 *Եւ դատեաց զիսրայէլ յաւուրս այլազգեաց ամս քսան ։

## ԳԼ ։ ԺԶ ։

1 Եւ չոգաւ սամփսոն անտի 'ի գազայ ․ եւ ետես անդ զկին մի պոռնիկ՝ եւ եմուտ առ նա ։ 2 *Եւ ազդ եղեւ գազացւոցն՝ եւ ասեն ․ եկեալ է այր սամփսոն ․ եւ պատեցին՝ եւ դարանակալք եղեն նմա զգիշերն ողջոյն առ դրան քաղաքին ․ եւ անշշունջ կացին զգիշերն ողջոյն ․ եւ ասեն ․ աստ կացցուք մինչեւ ցառաւօտ ․ եւ սպանցուք զնա ։ 3 *Եւ ննջեաց սամփսոն մինչեւ ցմէջ գիշերոյն ․ եւ յարեաւ զմէջ գիշերաւն ․ եւ թափեաց զդրունս քաղաքին հանդերձ սեմօքն ․ եւ եբարձ զնս հանդերձ նգօքն ․ եւ եդ 'ի վերայ ուսոց իւրոց ․ եւ եհան զնս 'ի գլուխ լերինն՝ որ է հանդէպ քեբրոնի ․ եւ եդ զնոսա անդ ։ 4 *Եւ եղեւ յետ այսորիկ սիրեաց զկին մի ․ առ եզերբ հեղեղատին սորեկայ ․ եւ անուն նորա դալիլա ։ 5 *Եւ ելին առ նա նախարարք այլազգեացն՝ եւ ասեն ։ պատրեա՛ զնա՝ եւ տես , իւ՞ իցէ զօրութիւն նորա մեծ ․ եւ կամ իւ՞ կարասցուք նմա հնար գտանել՝ եւ կապել զնա առ 'ի տկարացուցանել զնա ․ եւ մեք տացուք քեզ այր իւրաքանչիւր հազար եւ հարիւր արծաթոյ ։ 6 *Եւ ասէ դալիլա ցսամփսոն ․ պատմեա՛ ինձ ․ իւ՞ իցէ զօրութիւնք քո մեծ ․ եւ իւ՞ կապիցիս առ 'ի տկարացուցանելոյ զքեզ ։ 7 *Եւ ասէ ցնա սամփսոն ։ եթէ կապիցեն զիս եօթն ջլօք դալարովք չվատեալովք , տկարացայց՝ եւ եղէց իբրեւ զմի 'ի մարդկանէ ։



8 *Եւ բերին առ նա նախարարք այլազգեացն ․ եօթն ջիլս դալարս անվտիտս ։ եւ նա կապեաց զնա նոքօք ։ 9 *Եւ դարան նստէր նմա 'ի շտեմարանի ․ եւ ասէ ցնա ․ այլազգիք հասեալ են 'ի վերայ քո սամփսոն ։ եւ խզեաց զջիլսն՝ զոր օրինակ խզիցի քուղ 'ի թօթափելոյ յորժամ 'ի հուր հոտոտիցի ։ եւ ոչ ծանուցաւ զօրութիւն նորա ։ 10 *Եւ ասէ դալիլա ցսամփսոն ․ ահա խաբե-

խաբեցեր զիս՝ և խօսեցար սուտ․ դո_
նէ՝ արդ պատմեա՛ ինձ, թէ իւ՞ կա_
պեցիս ։ 11 * Եւ՛ ասէ ցնա ։ եթէ կապե
լով կապեսցեն զիս եօթն կարովք
նորովք, որովք չիցէ գործեալ գործ․
տկարացայց՝ և եղէց իբրև զմի 'ի
մարդկանէ ։ 12 * Եւ՛ էառ դալիլա կարս
նորս․ և կապեաց զնա նոքօք ։ և ասէ
ցնա․ այլազգիք հասեալ են 'ի վ՟ր քո
սամփսոն ։ և դարան նստէր նմա 'ի
շտեմարանի ։ և խզեաց զայն 'ի բազ_
կաց իւրոց իբրև զասղանի ։ 13 * Եւ՛ ասէ
դալիլա ցսամփսոն․ մինչև ցե՞րբ խաբի
ցես զիս․ և խօսիցիս ընդ իս սուտ․ արդ
պատմեա՛ ինձ․ իւ՞ կապիցիս ։ և ասէ
ցնա․ եթէ անկցես զեօթանեսին գի
սակս գլխոյ իմոյ ընդ ազբին․ և վար
սեսցես ցցովք ընդ որմն․ եղէց տկա
րացեալ իբրև զմի 'ի մարդկանէ ։
14 * Եւ ննջեցոյց զնա դալիլա․ և էառ
զեօթանեսին գիսակս գլխոյ ն՟ր հան
դերձ ազբամբն․ և վարսեաց ցցովք
ընդ որմն․ և ասէ ցնա․ այլազգիք
հասեալ են 'ի վերայ քո սամփսոն ։ և
զարթեաւ 'ի քնոյ իւրմէ․ և կորզեաց
զցիցսն հանդերձ ոստայնիւն և ազ
բամբն յորմոյ անտի․ և ոչ ծանուցաւ
զօրութի՟ն նորա ։ 15 * Եւ ասէ ցնա դա_
լիլա․ զիա՞րդ ասես՝ թէ սիրեցի զքեզ․
և սիրտ քո չէ ուղիղ ընդ իս ։ այս ե_
րիցս անգամ՝ խաբեցեր զիս․ և ո՛չ
պատմեցեր ինձ, թէ իւ՞ իցէ զօրու_
թիւդ քո մեծ ։ 16 * Եւ՛ եղև իբրև վտան
գեաց զնա բանիւք զգիշերն ողջոյն՝ և
թախանձեցոյց զնա․ և պարտասեցոյց
զնա մինչև ցմահ ։ 17 * Պատմեաց նմա
զա՟մ ինչ 'ի սրտէ իւրմէ․ և ասէ ցնա․
ածելի ո՛չ ելցէ 'ի գլուխ իմ․ զի ուխ_
տաւոր Ա՟յ եմ ես յորովայնէ մօր ի_
մոյ․ ապա թէ գերծուցում․ մեկնես
ցի յինէն զօրութի՟ իմ․ և տկարացայց․
և եղէց իբրև զա՟մ մարդիկ ։ 18 * Իբրև
ետես դալիլա․ եթէ պատմեաց նմա
զա՟մ ինչ 'ի սրտէ իւրմէ ։ առաքեաց՝
և կոչեաց զնախարարս այլազգեացն՝
և ասէ․ ելէք միանգամայն՝ զի պատ_
մեաց ինձ զա՟մ 'ի սրտէ իւրմէ ։ և ելին
առ նա նախարարքն այլազգեացն․ և
բերին զարծաթն 'ի ձեռս իւրեանց ։
19 * Եւ՛ ննջեցոյց զնա 'ի մէջ ծնկաց իւր
ոց․ և կոչեաց զոմն 'ի վարսավիրաց․ և
էպերծ զեօթանեսին գիսակս գլխոյ
ն՟ր ։ և սկսաւ թօշնիլ․ և մեկնեցաւ 'ի
նմանէ զօրութի՟ն նորա ։ 20 * Եւ՛ ասէ դա
լիլա․ այլազգիք հասեալ են 'ի վերայ
քո սամփսոն․ և զարթեաւ 'ի քնոյ
իւրմէ․ և ասէ ։ ելից՝ և արարից ո՟պ
միշտն․ և թօթափեցից ։ և նա ոչ գի

Է

տէր թէ Տ՟ր մեկնեցաւ 'ի նմանէ ։
21 * Եւ՛ կալան զնա այլազգիքն, և բրե_
ցին զաչս նորա․ և իջուցին զնա 'ի գա
զայ․ և կապեցին զնա երկաթի կա_
պանօք ։ և աղայր 'ի տան բանտին ։
22 * Եւ՛ սկսաւ մազ գլխոյ նորա բուսա
նիլ յետ գերծլոյն ։ 23 * Եւ իշխանք
այլազգեացն ժողովեցան զոհել զոհ
մեծ դագոնայ աստուծոյն իւրեանց․
և ուրախ լինել․ և ասէին․ մատնեաց
աստուա՛ծ մեր զսամփսոն թշնամի մեր
'ի ձեռս մեր ։ 24 * Իբրև տեսին ժողո_
վուրդքն՝ օրհնէին զաստուա՛ծս իւր_
եանց․ զի ասային թէ մատնեաց աս_
տուա՛ծ մեր զթշնամիս մեր 'ի ձեռս
մեր․ և զապականիչ երկրի մերում,
25 որ յաճախեաց զվիրաւորս մեր ։ * Եւ՛
եղև իբրև զուա՛րթացան սիրտք իւր
եանց․ ասէն․ կոչեցէք զսամփսոն 'ի
տանէ բանտին․ և խաղասցէ առաջի
մեր ։ և կոչեցին զսամփսոն 'ի տանէ
բանտին․ և խաղային նովաւ ։ և կա_
ցուցին զնա 'ի մէջ երկուց սեանցն ։
26 * Եւ՛ ասէ սամփսոն ցպատանին՝ որ
ունէր զձեռանէ ն՟ր ։ թո՛յլ տուր ինձ,
և զննեցից զսիւնս՝ յորոյ վերայ տունս
հաստատեալ կայ․ և յեցայց 'ի նոսա ։
27 * Եւ՛ տունն լի էր արամբք և կա_
նամբք ։ և անդ ա՟մ նախարարք այլ_
ազգեացն՝ և 'ի տանիսն՝ իբրև երեք
հազարք․ արք և կանայք․ որք տեսա_
28 նէին զխաղն սամփսոնի ։ * Եւ՛ աղա
ղակեաց սամփսոն առ Տ՟ր՝ և ասէ․ Տ՟ր
Տ՟ր զօրութե՟ց, յիշեա՛ զիս․ և զօրացո՛
զիս՝ զայս ևս մի նուա՛գ՝ Ա՟Ծ ։ և խնդ
րեցից զվրէժխնդրութի՟ իմ փոխա_
նակ երկոցունց աչաց իմոց յայլազ_
29 գեաց աստի ։ * Եւ՛ բուռն եհար սամփ
սոն զերկոցունց սեանցն միջնոց, յորոց
վ՟ր տունն հաստատեալ կայր․ և յեցաւ
'ի նո՟ 'ի միոյն աջով իւրով․ և 'ի միւսն
30 ձախով իւրով ։ * Եւ՛ ասէ սամփսոն․
մեռցի անձն իմ ընդ այլազգիս․ և
շարժեաց զօրութե՟․ և անկաւ տունն
'ի վ՟ր ա՟մ նախարարացն․ և 'ի վերայ
ա՟մ ժողովրդեան որ 'ի նմա․ և էին մեռ_
եալքն՝ զորս մեռոյց սամփսոն 'ի մա_
հուա՛ն իւրում, առաւել՝ քան զորս սպան
31 'ի կենդանութե՟ իւրում ։ * Եւ՛ իջին եղ_
բարքն նորա՝ և ա՟մ տուն հօր նորա․
և բարձին՝ և հանին՝ թաղեցին զնա
'ի մէջ սարայ՝ և 'ի մէջ եսթաւու_
լայ՝ 'ի գերեզմանի մանուէ՛այ հօր իւր_
ոյ․ և նա դատեաց զի՟էլ ամս քսան ։

## ԳԼ ։ ԺԷ ։

1 Եւ՛ եղև այր 'ի լեռնէ եփրեմայ․ և
2 անուն նորա միքա ։ * Եւ՛ ասէ

ցմայր իւր. զՀազար և զմեցՀարիւր արծաթոյն՝ զոր առեր առ քեզ՝ և եր դուճար. և ասես յականջս իմ. Թէ որ ծաթն առ իս է՝ ես առի զայն։ Եւ ասէ մայր նորա. օրՀնեալ լիցիս որդեակ իմ 'ի Տէ։ 3 * Եւ դարձոյց անդրէն զՀազար և զմեցՀարիւր արծաթոյն առ մայր իւր. և ասէ մայր նորա. սրբելով սրբեցի զարծաթն Տն 'ի ձեռանէ իմմէ և առանձինն. առնել դրօշեալ և ձուլածոյ. և արդ դարձուցից զնա առ քեզ։ 4 * Եւ դարձոյց զարծաթն առ մայր իւր. և էառ մայր նր զերկերիւր արծաթոյ. և ետ զայն ձուլչի. և արար զայն դրօշեալ և ձուլածոյ՝ և եղև 'ի տան միքայի։ 5 * Եւ տուն միքայի՝ նմա տուն աստուծոյ. և արար եփուտ. և թերափ. և ելից զձեռս միոյ յորդւոց իւրոց. և եղև նմա 'ի քաՀանայ։ 6 * Յաւուրսն յայնոսիկ ոչ գոյր թագաւոր իՂի. և այր իւրաքանչիւր զՀաճոյս աչաց իւրոց առնէր։ 7 * Եւ եղև պատանեակ մի 'ի բեթղեՀեմէ յուդայ. յազգէ տոհմին յուդայի՝ և ինքն ղևտացի. և բնակէր նա անդ։ 8 * Եւ գնաց այրն 'ի քաղաքէ բեթղեՀեմէ յուդայ պանդխտիլ ուր և գտանիցէ. և եկն մինչև ցլեառնն եփրեմի. և մինչև ցտունն միքայ առնել զճանապարհ իւր։ 9 * Եւ ասէ ցնա միքա՝ ուստի գաս։ և ասէ ցնա. ղևտացի եմ ես 'ի բեթղեՀեմէ յուդայ. և երթամ պանդխտանալ՝ ուր և գտանիցեմ։ 10 * Եւ ասէ ցնա միքա. նիստ աստ առ իս՝ և լեր ինձ 'ի Հայր և 'ի քաՀանայ՝ և ես տաց քեզ տասն արծաթոյ աւուրց յաւուրս. և զոյգս ձորձոց. և զռոճիկ՝ որով կեցցես և չոգաւ ղևտացին։ 11 * Եւ սկսաւ պանդխտանալ առ առնն. և եղև նմա պատանեակն իբրև զմի յորդւոց նր։ 12 * Եւ ելից միքա զձեռս ղևտացւոյն. և եղև նմա պատանեակն 'ի քաՀանայ. և էր 'ի տան միքայ։ 13 * Եւ ասէ միքա՝ այժմ գիտացի՝ եթէ բարի արար ինձ Տր. զի եղև ինձ ղևտացին 'ի քաՀանայ։ 14 * Յաւուրսն յայնոսիկ ոչ գոյր թագաւոր իՂի։

## Գլ. ԺԸ.

1 Եւ յաւուրսն յայնոսիկ ցեղն դանայ խնդրէր իւր ժառանգութի բնակելոյ. զի ոչ եՀաս նմա ցաւուրսն ցայնոսիկ 'ի մէջ ցեղին իՂի ժառանգութի։ 2 * Եւ առաքեցին որդիքն դանայ 'ի տոՀմից իւրեանց արս Հինգ. այր ըստ ցեղի իւրեանց որդիս զօրութե 'ի սարաայ և յեսթաւուղայ, լրտեսել զերկիրն. և Հետազօտել զնա. և ասեն ցնոսա՝ երթա՛յք որոնեցէք զերկիրն. և չոգան 'ի լեառնն եփրեմայ մինչև ցտունն միքայ. և Հանգեան անդ։ 3 * Եւ մինչդեռ էին նոքա 'ի տան միքայ, ծանեան զձայն պատանեկին ղևտացւոյ. և խոտորեցան անդ. և ասեն ցնա. ո՞ էած զքեզ այսր. և զի՞նչ գործես դու աստ. և կամ զի՞նչ կայ քո աստ։ 4 * Եւ ասէ ցնոսա. այսպէս և այսպէս արար ինձ միքա. և կալաւ զիս 'ի վարձու. և եղէ նմա 'ի քաՀանայ։ 5 * Եւ ասեն ցնա՝ աղէ Հա՛րց զԱծ. և գիտասցուք եթէ յաջողեսցի մեզ ճանապարՀս մեր՝ յոր երթամք։ 6 * Եւ ասէ ցնոսա քաՀանայն. երթա՛յք 'ի խաղաղութի. առաջի Տն է ճանապարՀ ձեր՝ զոր երթայք։ 7 * Եւ գնացին Հնգեքին արքն. և չոգան 'ի լայիսայ. և տեսին զժողովուրդն որ 'ի նմա. որ բնակեալ նստէր յուսով ը նմանութե սիդոնացւոց Հանդարտելոցն յուսով. և ոչ բաւական լինելոյ խօսիլ ումեք զբան մի յերկրի. զանձուցն ժառանգաւորի՝ քանզի Հեռի էին 'ի սիդոնէ. և բանք ինչ ոչ գոյին նց ընդ ասորիս։ 8 * Եւ եկին Հնգեքին արքն առ եղբարս իւրեանց 'ի սարաայ և յեսթաւուղ. և ասեն ցնոսա եղբարք իւրեանց. զի՞ նստիք դուք։ 9 * Եւ ասեն. արի՛ք և ելցո՛ւք 'ի վերայ նոցա՝ զի մտաք՝ և շրջեցաք ընդ երկիրն մինչև լայիսայ՝ և տեսաք զժողովուրդ բնակեալ 'ի նմա յուսով, Հանդոյն սիդոնացւոց՝ և Հեռի 'ի սիդոնէ՝ և բանք ինչ ոչ գոյ նց ընդ ասորիս։ արի՛ք՝ և ելցո՛ւք 'ի վր նց. զի աՀա տեսաք զերկիրն՝ և բարի է յոյժ. և դուք դադարեալ կայք՝ և արդ էր վատանայք երթալ ժառանգել զերկիրն։ 10 * Եւ եղիցի յորժամ երթայք՝ մտնիք զազգն յուսացեալ. և զերկիրն ընդարձակ՝ զի մատնեաց զնա Ած 'ի ձեռս մեր՝ տեղի յորում ոչ գոյ պակասութի ամ բանի՝ որինչ իցէ յերկրի։ 11 * Եւ խաղացին անտի յազգականութենէ տոհմիցն դանայ՝ 'ի սարաայ և յեսթաւուղայ, արք վեցՀարիւր վառեալք զինու պատերազմի։ 12 * Եւ ելին բանակեցան 'ի կարիաթարիմ յուդայ. վն այնորիկ կոչեցաւ տեղին այն բանակեալ դանայ մինչև ցայսօր. որ է 'ի թիկանց կարիաթարիմայ։ 13 * Եւ անցին անտի. և եկին մինչև ցլեառնն եփրեմայ. և Հասին մինչև 'ի տունն միքայի։ 14 * Պատասխանի ետուն արքն Հնգեքին՝ որք երթեալ էին լրտեսել զերկիրն լայիսայ. և ասեն ցեղբարս

իւր֊

իւրեանց. եթէ գիտիցէք՝ զի՛ 'ի տունս յայսոսիկ է եփուտ . և թերափ . և դրօշեալ . և ձուլածու . արդ գիտասջի՛ք՝ զինչ առնիցէք ։ 15 * Եւ խոտորեցան անդ . և մտին 'ի տուն պատանեկին ղևտացւոյ՝ որ էր 'ի տան միքայ . և հարցին զողջունէ նորա ։ 16 * Եւ վեց հարիւր արքն վառեալք պատերազմական զինու իւրեանց արձանացեալք կային առ մուտս դրանն՝ որք էին յորդւոցն դանայ ։ 17 * Եւ ելին հնգեքին արքն՝ որք երթեալ էին լրտեսել զերկիրն . յարձակեցան՝ և առին զդրօշեալն . և զեփուտն . և զթերափ . և զձուլածու . և քահանայն արձանացեալ կայր 'ի մուտս դրանն . և վեց հարիւր արքն վառեալք պատերազմական զինու ։ 18 * Եւ նոքա մտին 'ի տունն միքայ . և առին զդրօշեալն . և զեփուտ . և զթերափ . և զձուլածու . և ասէ ցնոսա քահանայն . զի՞նչ գործէք դուք ։ 19 * Եւ ասեն ցնա . կարկեա՛ց՝ ափիբերան լեր . և եկ ընդ մեզ . և լեր մեզ 'ի հայր . և 'ի քահանայ . մի թէ լա՞ւ իցէ լինիլ քեզ քահանայ տան միոյ առն՝ քան լինիլ քահանայ ցեղի միոյ՝ և ազգի իՂի ։ 20 * Եւ զուա՛րթացաւ սիրտ քահանային . և էառ զեփուտն . և զթերափ . և զդրօշեալ՝ և զձուլածու . և եմուտ 'ի մէջ զօրուն ։ 21 * Եւ դարձան՝ և գնացին . և հարին համօրէն զտունն . և զստացուա՛ծսն վայելչութե նր առաջի նց ։ 22 * Եւ 'ի հեռանալ նց 'ի տանէ միքայ . և ահա միքա և արքն՝ որք 'ի տունս նր էին Ը միքայ . բողոք բարձին . և հասին որդւոցն դանայ ։ 23 * Եւ դարձուցին զերեսս իւրեանց որդիքն դանայ՝ և ասեն ցմիքայ . զի՞ է քեզ՝ զի աղաղակես ։ 24 * Եւ ասէ միքա . զի զաստուա՛ծսն իմ, զորս արարի ինձ՝ առիք և զքահանայն՝ և գնացիք . և զի՞նչ կայ այսուհետև ինձ . և զի՞նչ է այդ՝ զոր ասէք ցիս . թէ զի՞ աղաղակես ։ 25 * Եւ ասեն ցնա որդիքն դանայ . մի՛ լուի՛ցի ձայն քո զկնի մեր . գուցէ պատահիցին քեզ արք դառնացեալք ոգւով . և դնիցեն զանձն քո և զանձն տան քոյ ։ 26 * Եւ գնացին որդիքն դանայ զճանապարհս իւրեանց . և իբրև ետես միքա, եթէ բռնադոյնք քան զնա են . դարձաւ 'ի տուն իւր ։ 27 * Եւ նք առին՝ զոր ինչ արարն միքա . և զքահանայն նր . և չոգան 'ի լայիսա , 'ի ժողովուրդն հանդարտացեալ . և վստահացեալ յուսով . և հարին զնոսա սրով սուսերի . և զքաղաքն այրեցին ։ 28 * Եւ ո՛չ ոք էր՝ որ փրկէր . զի հեռի էին 'ի սիդոնացւոց . և բանք ինչ ո՛չ էին նց ընդ ումեք 'ի մարդկանէ . և նա կայր 'ի հովտի տանն ռօբայ . և շինեցին զքաղաքն՝ և բնակեցան 'ի նմա ։ 29 * ‖ Եւ կոչեցին զանունն նր դան՝ ըստ անուա՛ն հօրն իւրեանց՝ որ եղև իՂի . և էր անունն քաղաքին յառաջագոյն լայիսա ։ 30 * Եւ կանգնեցին իւրեանց որդիքն դանայ զդրօշեալն միքայ . և յովնաթան որդի գերսոնի որդւոյ մանասէի՝ ինքն և որդիք իւր էին քուրմք ցեղին դանայ , մինչև ցօր գերութե երկրին ։ 31 * Եւ կարգեցին իւրեանց զդրօշեալն միքայ զամ աւուրս՝ զորս էր տունն ԱՅ 'ի սելով ։

‖ Յեսու. 19. 47.

## ԳԼ: ԺԹ:

1 Եւ՛ եղև յաւուրսն յայնոսիկ . և թագաւոր ո՛չ գո՛յր յիՂի . և էր այր ղևտացի պանդխտեալ 'ի կողմանս լերինն եփրեմի ։ և էառ իւր այր՛ն կին 2 հարճ՝ 'ի բեթղէհեմէ յուդայ ։ * Եւ՛ սրտեաւ 'ի նմանէ հարճն իւր . և գնաց 'ի նմանէ 'ի տունն հօր իւրոյ 'ի բեթղէհեմ յուդայ . և եղև անդ զե3 րիս ամիսս ։ * Եւ՛ յարուցեալ այրն չոգաւ զհետ նր . խօսիլ 'ի սիրտ նր ։ և հաշտեցուցանել զնա ընդ իւր . և ածել միւս անգամ առ ինքն . և պատանի իւր ընդ իւր . և զոյգ իշոց . և չոգան մինչև ցտուն հօր նորա . իբրև ետես զնա հայր աղջկանն . ել ընդ 4 առաջ նորա ։ * Եւ՛ տարաւ զնա 'ի ներքս աներն իւր հայր աղջկանն . և նստաւ առ նմա աւուրս երիս . և կերին՝ և արբին՝ և ննջեցին անդ ։ 5 * Եւ եղև յաւուրն չորրորդի՝ կանխեցին Ը առաւօտն . և յարեան գնալ . և ասէ հայր աղջկանն ցփեսայ իւր . հաստատեա՛ զսիրտ քո պատառով միով հա6 ցի՛, և ապա գնասջի՛ք ։ * Եւ նստան՝ կերին՝ և արբին երկոքին 'ի միասին . և ասէ հայր աղջկանն ցփեսայ իւր . արդ սկսեալ աստէն իսկ ագիր՝ և 7 զուա՛րթասցի սիրտ քո ։ * Եւ յարեաւ այրն 'ի գնալ . և բռնադատեաց զնա 8 աներն իւր . և անդէն ագաւ ։ * Եւ կանխեաց ընդ առաւօտն յաւուրն հինգերորդի 'ի գնալ՝ ասէ հայր աղջկանն . հաստատեա՛ զսիրտ քո հացի՛, և զբօսիր . մինչև շրջեսցի օրն . և կե9 րին՝ և արբին երկոքին ։ * Եւ՛ յարեաւ այրն գնալ . ինքն՝ և հարճն՝ և պատանին իւր . և ասէ ցնա հայր աղջկանն . ահա դարձաւ օրս յերեկս . աստէն ագիր՝ և զուա՛րթասցի սիրտ քո . և կանխեսջիր վաղիւ՛ 'ի ճանապարհ քո . 10 և երթիցես 'ի յարկս քո ։ * Եւ ո՛չ կամե-

ցաւ այրն ագանել անդ՝ այլ յարեաւ և գնաց. և եկն՝ եհաս մինչև ցհանդէպ յեբուսայ, այն է երուսաղէմ. և ընդ նմա զոյգ էշոց համետելոց. և հարճն իւր ը՟ նմա։ 11 *Եւ նոքա հանդէպ յեբուսայ. և օրն խոնարհեցաւ յոյժ. ասէ պատանին ցտէր իւր. եկ՛ խոտորեսցուք ՚ի քաղաքն յեբուսացւոց. և ագցուք ՚ի նմա։ 12 *Եւ ասէ ցնա տէր իւր. ոչ խոտորեսցուք ՚ի քաղաքս օտարոտեացս. յորում ոչ գուցէ յորդւոցն Իէլի. այլ անցցուք մինչև ցգաբաայ։ 13 *Եւ ասէ ցպատանին իւր. եկ՛ մերձեսցուք ՚ի միուրեք ՚ի տեղեաց. և անդ ագցուք ՚ի գաբաայ. կամ ՚ի հռամայ։ 14 *Եւ գնացին. և եմուտ նոցա արեգակն մերձ ՚ի գաբաայ որ է բենիամինի։ 15 *Եւ խոտորեցան անդր մտանել և ագանել ՚ի գաբաայ. և եմուտ և նստաւ ՚ի հրապարակի քաղաքին. և ոչ էր այր՝ որ ժողովէր զնոսա ՚ի տուն իւր ագանել։ 16 *Եւ ահա այր մի ծեր՝ եմուտ ՚ի գործոյ իւրմէ յանդոյ անագանի. և այրն էր ՚ի լեռնէ եփրեմայ. և ինքն պանդխտացեալ էր ՚ի գաբաայ. և արք տեղւոյն որդիք բենիամինի։ 17 *Եւ ամբարձեալ զաչս իւր՝ ետես զայրն ուղևոր ՚ի մէջ հրապարակի քաղաքին. և ասէ այրն ծեր. յո՞ երթաս՝ և ուստի՞ գաս։ 18 *Եւ ասէ ցնա. անցանեմք մեք ՚ի բեթղեհեմէ յուդայ մինչև ցկողմանս լերինն եփրեմայ՝ քանզի անտի եմ ես. և չոգայ մինչև ցբեթղեհեմ յուդայ. և ՚ի տուն հօր իմոյ երթամ. և չիք այր՝ որ ժողովեսցէ զմեզ ՚ի տուն։ 19 *Եւ յարդ՝ և խոտ կայ էշոց մերոց. և հաց՝ և գինի՝ ինձ և աղջկանդ՝ և պատանւոյդ. և չէ ինչ պակասութի ամ՟ իրաց ծառայից քոց։ 20 *Եւ ասէ այրն ծեր. խաղաղութի ընդ քեզ. ամենայն պակասութիւնք քո զինև՝ բայց դու ՚ի հրապարակիդ մի ագանիցես։ 21 *Եւ տարաւ զնա ՚ի տուն իւր. և էարկ խոտ իշոյն. և լուացին զոտս նոցա. և կերին՝ և արբին։ 22 *Եւ ՚ի զուարթանալ սրտից նոցա. ահա արք քաղաքին. արք որդիք անօրինաց պատեցին զտունն. և խօսեցան ընդ առն ծերոյ ընդ տեառն տանն՝ և ասեն. ‖ հան զայրդ մտեալ ՚ի տուն քո. զի գիտասցուք զդա։ 23 *Եւ ել առ նոսա այրն՝ տէր տանն. և ասէ ցնոսա. քա՛ւ լիցի ձեզ եղբարք. մի ինչ անզգամք յետ մտանելոյ առնդ այդորիկ ՚ի տուն իմ. մի առնէք զանզգամութիւնդ զայդ։ 24 *Ահաւասիկ դուստր իմ կոյս. և հարճ նորա. հանից զնոսա արտաքս. և լլկեցէք զնոսա. և արարէք ընդ նոսա զինչ հաճոյ է յաչս ձեր. և առն այսմիկ մի առնէք ըստ անզգամութե՟ բանիդ այդորիկ։

‖ Ծննդ. 19.5.

25 *‖ Եւ ոչ կամեցան արքն անսալ. և էառ այրն զհարճն իւր. և եհան զնա արտաքս. և գիտացին զնա. և լլկեցին զնա զգիշերն ողջոյն. մինչև ցառաւօտ. և արձակեցին զնա ՚ի ծագել առաւօտուն։ 26 *Եւ եկն կինն ընդ առաւօտն. և անկաւ առ դրանդւոյ դրան տան առնն՝ ուր էր տէր նորա. և եհան զոգին։ 27 *Եւ յարեաւ տէր նորա ը՟ առաւօտն. և եբաց զդուրս տանն. և ել գնալ զճանապարհս իւր. և ահա կինն հարճ նորա անկեալ կայր առ դրանն. և ձեռն իւր ՚ի վ՟ր դրանդւոյն։ 28 *Եւ ասէ ցնա. արի՛ և գնասցուք. և ոչ ետ նմա պատասխանի, քանզի մեռեալ էր. և էառ՝ և եհան զնա յէշ. և յարեաւ այրն՝ և չոգաւ ՚ի տեղի իւր։ 29 *Իբրև եմուտ ՚ի տուն իւր. էառ զսուր. և բուռն եհար զհարճէն իւրմէ. և յօշեաց զնա ըստ ոսկերաց իւրոց յերկոտասան մասն. և առաքեաց զայն ընդ ամ՟ ցեղսն Իէլի։ 30 *Եւ եղև՝ զի ամ՟ որ տեսանէր, ասէր՝ թէ ոչ երևեցաւ այսպէս յաւուրց ելանելոյ որդւոցն Իէլի յերկրէն եգիպտացւոց մինչև ցայսօր. արդ՝ առէք ձեզ վասն այդորիկ խորհուրդ. և խօսեցարո՛ւք։

‖ Ովս. 9. 9.

## ԳԼ. Ի։

1 Եւ ելին ամ՟ որդիքն Իէլի՝ և եկեղեցաւ ժողովուրդն իբրև զայր մի ՚ի դանայ մինչև ցբերսաբէէ, և երկիրն գաղաադու՝ առ Տ՟ր ՚ի մասեփայ։ 2 *Եւ եկաց կողմն ամենայն ժողովրդեանն. և ամ՟ ցեղք իսրայէլի յամենայն եկեղեցւոջ ժողովրդեանն Ն՟Ճ. չորեքհարիւր հազար արանց սուսերամերկաց։ 3 *Եւ լուան որդիքն բենիամինի, եթէ ելին որդիքն Իէլի ՚ի մասեփայ. և ասեն որդիքն իսրայէլի. խօսեցարո՛ւք՝ թէ ո՞ւր եղև այսպիսի չարութի։ 4 *Պատասխանի ետ այրն ղևտացի, այր կնոջն սպանելոյ. և ասէ ՚ի գաբաայ բենիամինի եկի ես և հարճ իմ ագանել։ 5 *Եւ յարեան ՚ի վ՟ր իմ արք գաբաացիք. և պատեցին շուրջ զինև զտունն զցայգ. և զիս կամեցան սպանանել. և զհարճն իմ լլկեցին՝ և հեղձուցին. և մեռաւ։ 6 *Եւ առի զհարճն իմ, և յօշեցի զնա. և առաքեցի յամ՟ սահմանս ժառանգութե՟ Իէլի. զի արարին զխնամ մեծ 7 և զանզգամութի ՚ի մէջ Իէլի։ *Եւ ահաւասիկ մեք ամենեքեան որդիք Իէլի, տուք մեզ զբան և զխորհուրդ։

*Եւ

8 * Եւ յարեաւ ամենայն ժողովուրդն իբրեւ զայր մի. եւ ասեն՝ ոչ մտցուք այր իւրաքանչիւր ընդ յարկաւ իւրով՝ եւ ոչ խոտորեսցուք այր իւրաքանչիւր ՚ի տուն իւր ։ 9 * Եւ արդ այս բան է, զոր արասցուք ընդ գաբաայ՝ ելցուք ՚ի վերայ նորա վիճակաւ ։ 10 * Եւ այց առցուք տասն այր ՚ի հարիւրոց. յամենայն ցեղից իէլի. եւ հարիւր ՚ի հազարաց. եւ հազարս ՚ի բիւրուց. առնուլ պաշար զօրուս բովանդակ երթողաց ՚ի գաբաայ բենիամինի. ըստ ամենայն անզգամութեան՝ զոր արարին ՚ի մէջ իսրայէլի ։ 11 * Եւ ժողովեցաւ ամենայն իէլ իբրեւ զայր մի եկեալք ՚ի քաղաքաց ։ 12 * Եւ առաքեցին ցեղքն իէլի առ յամենայն ցեղն բենիամինի՝ եւ ասեն. զի՞նչ է չարութիւնդ այդ եղեալ ՚ի միջի ձերում ։ 13 * Եւ արդ տուէք զարսն զամպարիշտս զգաբաացիս՝ զորդիսն բելիարայ. եւ սպանցուք զնոսա. եւ բարձցուք զչարիսն յիէլէ ։ եւ ոչ կամեցան որդիքն բենիամինի լսել ձայնի եղբարց իւրեանց՝ որդւոցն իէլի ։ 14 * Եւ ժողովեցան որդիքն բենիամինի ՚ի քաղաքաց իւրեանց ՚ի գաբաայ՝ ելանել ՚ի պատերազմ ընդ որդիսն իէլի ։ 15 * Եւ հանդէս արարին որդիքն բենիամինի յաւուր յայնմիկ յիւրաքանչիւր քաղաքաց. քսան եւ հինգ հազարաց արանց սուսերամերկաց. թող զբնակիչս գաբաացւոց ։ 16 * Որք անցին ՚ի հանդէսի եօթնհարիւր արք երկոտասարդք ընտիրք յամենայն ժողովրդենէն յերկոցունց ձեռաց յաջողակք՝ ամենեքին նոքա պարսաւորք. որք ձգէին քարինս, եւ ՚ի մազէ ոչ վրիպէին ։ 17 * Եւ ամենայն այր իէլի անցին ՚ի հանդէսի. առանց որդւոցն բենիամինի. չորեք հարիւր հազարք արանց սուսերամերկաց. ամենեքին նոքա արք պատերազմօղք ։ 18 * Եւ յարեան՝ ելին ՚ի բեթէլ. եւ հարցին զԱծ՝ եւ ասեն որդիքն իէլի. ո՞վ ելցէ մեզ առաջնորդ պատերազմիլ ընդ որդիսն բենիամինի. եւ ասէ Տր՝ յուդա ելցէ առաջնորդ ։ 19 * Եւ յարեան որդիքն իէլի ընդ առաւօտն. եւ բանակեցան զգաբաաւ ։ 20 * Եւ ել այր իէլացի պատերազմիլ ընդ բենիամինի. եւ ճակատեցան ընդ նոսա այր իէլի պատերազմ առ գաբաաւ ։ 21 * Եւ ելին որդիքն բենիամինի ՚ի քաղաքէն. եւ սատակեցին յիէլէ քսան եւ երկուս հազարս արանց՝ յաւուր յայնմիկ. եւ արկին տապաստ յերկիր ։ 22 * Եւ զօրացան դարձեալ այր իէլացի եւ յաւելին ճակատիլ ՚ի պատերազմ ՚ի տեղւոջ ուր ճակատեցան յաւուրն առաջնում ։ 23 * Եւ ելին որդիքն իսրայէլի՝ եւ լացին առաջի Տն մինչեւ ցերեկոյ. եւ հարցին զՏր՝ եւ ասեն. եթէ յաւելցուք մարտնչիլ ՚ի պատերազմ՝ ընդ բենիամինի եղբօր մերում. եւ ասէ Տր՝ ելէք ՚ի վերայ նց ։ 24 * Եւ ելին որդիքն իսրայէլի ՚ի պատերազմ ընդ որդիսն բենիամինի յաւուրն երկրորդի ։ 25 * Եւ ել բենիամին ընդդէմ նց ՚ի պատերազմ յաւուրն երկրորդի. եւ սատակեաց միւսանգամ ՚ի ժողովրդենէ անտի ութն հազար արանց յերկիր՝ ամենեքեան նք արք սուսերաձիգք ։ 26 * Եւ ելին ամենայն որդիքն իէլի եւ ամենայն ժողովուրդն՝ եւ եկին ՚ի բեթէլ. եւ նստան՝ եւ լացին առաջի Տն. եւ պահեցին յաւուրն յայնմիկ. եւ մատուցին ողջակէզս փրկութեան առաջի Տն ։ 27 * Վասնզի անդ էր տապանակ ուխտին Տն Այ յաւուրսն յայնոսիկ ։ 28 * Եւ փենէէս որդի եղիազարու որդւոյ ահարոնի կայր առաջի նորա՝ յաւուրսն յայնոսիկ. եւ հարցին որդիքն իէլի զՏր, եւ ասեն, յաւելցո՞ւք միւսանգամ ելանել ՚ի պատերազմ ընդ որդիսն բենիամինի եղբօր մերում թէ դադարեսցուք. եւ ասէ Տր՝ ելէք. եւ վաղիւ տաց զնա ՚ի ձեռս ձեր ։ 29 * Եւ եդին որդիքն իէլի դարանակալս շուրջ զգաբաաւ ։ 30 * Եւ ելին որդիքն իսրայէլի ՚ի վր բենիամինի յաւուրն երրորդի. եւ ճակատեցան զգաբաաւ որպէս միանգամն եւ միւսանգամն ։ 31 * Եւ ելին որդիքն բենիամինի ընդդէմ ժողովրդեանն եւ ձգեցան ՚ի քաղաքէ անտի. եւ սկսան հարկանել վիրաւորս ՚ի ժողովրդենէ անտի՝ որպէս միանգամն եւ միւս անգամն առ ճանապարհօքն՝ որոց մին ելանէր ՚ի բեթէլ՝ եւ միւսն ելանէր ՚ի գաբաայ. եւ հարին յանդի անդ իբրեւ արս երեսուն յիէլէ ։ 32 * Եւ ասեն որդիքն բենիամինի. կոտորելոց են սոքա առաջի մեր իբրեւ զառաջինն. եւ որդիքն իսրայէլի ասեն. փախիցուք եւ մերժեսցուք զնս ՚ի քաղաքէն. եւ ՚ի ճանապարհէն ։ 33 * Եւ ամենայն այր իէլի յարեան յիւրաքանչիւր տեղւոջէ իւրմէ. եւ ճակատեցան ՚ի բաալթամար. եւ դարանակալքն իէլի կռուէին ՚ի տեղւոջէ իւրեանց յարեւմտից գաբաայ ։ 34 * Եւ եկին հանդէպ գաբաայ տասն հազար արանց ընտրելոց յամենայն իէլէ. եւ ծանրացաւ պատերազմն. եւ նոքա ոչ գիտէին թէ հասեալ են ՚ի վերայ նոցա չարիք ։ 35 * Եւ վանեաց Տր զբենիամին առաջի որդւոցն իէլի. եւ սատակեցին որդիքն իսրայէլի ՚ի բենիամինէ յաւուր յայնմիկ. քսան եւ հինգ հա_

հազար և հարիւր այր՝ ամենեքին նք սուսերամերձք ։ 36 * Եւ տեսին որդիքն բենիամինի՝ եթէ ՚ի պարտութեան մատնեալ են. տեղի ետուն արք իսրայէլի բենիամինի. զի յուսացեալ էին ՚ի դարանամուտսն՝ որք էին զգաբաաւ ։ 37 * Եւ յարձակեցան դարանամուտքն՝ և հեղան զգաբաաւ. և մտին՝ և հարին զքաղաքն բերանով սուսերի ։ 38 * Եւ ժամադրութիւն էր առն իսրայէլի առ դարանակալսն՝ հրով հանել նոցա զծուխ քաղաքին ։ 39 * Եւ դարձաւ այր իսրայէլի ՚ի պատերազմէն. և բենիամին սկսաւ հարկանել վիրաւորս ՚ի դարանակալացն իսրայէլի՝ իբրև արս երեսուն. զի ասացին թէ վանելով վանին առաջի մեր այսօր՝ իբրև զպատերազմն զառաջին ։ 40 * Եւ նշանակն ամբարձաւ յորդեալ ՚ի վերայ քաղաքին իբրև զսիւն ծխոյ. և հայեցաւ բենիամին ՚ի թիկունս իւր. և ահա ելանէր վախճան քաղաքին յերկինս ։ 41 * Եւ այր իսրայէլի դարձաւ անդրէն. և տագնապեցաւ այր բենիամինի. զի տեսին հասեալ ՚ի վերայ նոցա զչարիսն ։ 42 * Եւ խոյս ետուն յերեսաց առն իսրայէլի ընդ ճանապարհ անապատին ։ և պատերազմն ժամանեաց նոցա. և որք ՚ի քաղաքացն ելանէին, սատակէին զնոսա ՚ի մէջ իւրեանց ։ 43 * Եւ հարին զբենիամին. և մտին զհետ նորա ՚ի նուհայ մինչև հանդէպ գաբաայ. յարևելից կողմանէ ։ 44 * Եւ անկան ՚ի բենիամինէ ութուտասն հազար արանց. ամենեքին նոքա արք զօրաւորք ։ 45 * Եւ տեսեալ մնացորդացն՝ փախեան յանապատն ապառաժանի ՚ի վէմն ռեմոնայ. և ճռաքաղ արարին ՚ի նմանէ ՚ի ճանապարհին՝ հազարս հինգ՝ արանց. և պնդեցան զհետ նոցա մինչև ցգադաադ. և հարին ՚ի բենիամինէ երկուս հազարս արանց ։ 46 * Եւ եղեն ամենայն անկեալքն ՚ի բենիամինէ՝ քսան և հինգ հազար արանց սուսերամերկաց յաւուր յայնմիկ. ամենեքեան նոքա արք զօրութեան ։ 47 * Եւ խուսեալ մնացորդացն, փախեան յանապատն ապառաժանի ՚ի վէմն ռեմոնայ՝ արք վեցհարիւր ։ և նստան ՚ի վէմն ռեմոնի չորս ամիս ։ 48 * Եւ այր իսրայէլի դարձան ընդ կրունկն յորդւոցն բենիամինի. և հարին զնոսա բերանով սուսերի ՚ի քաղաքէ կարգաւ մինչև ցանասունն. մինչև ցամ գտեալ յամենայն քաղաքս ։ և զքաղաքսն այրեալս առաքեցին և այրեցին հրով ։

## ԳԼ: ԻԱ.

1 Եւ այր իսրայէլի երդուեան ՚ի մասեփա. և ասեն. այր ոք ՚ի մէնջ, մի տացէ զդուստր իւր բենիամինի կնութեան ։ 2 * Եւ եկին ամ ժողովուրդն ՚ի մասեփայ ՚ի բեթէլ. և նստան անդ մինչև ցերեկոյ՝ առաջի Այ ։ և ամբարձին զձայնս իւրեանց. և լացին 3 լալիւն մեծ ։ * Եւ ասեն. ընդէ՞ր Տէր Այ իսրայէլի, եղև այս լինել. բնաջինջ լինել այսօր յիսրայէլէ ցեղի միոյ ։ 4 * Եւ եղև ՚ի վաղիւն անդր կանխեաց ժողովուրդն՝ և շինեցին անդ սեղան. և մատուցին 5 զողջակէզս փրկութեան ։ * Եւ ասեն որդիքն իսրայէլի. ո՞վ է՝ որ ոչ ել յայս եկեղեցի յամ ցեղիցն իսրայէլի առ Տէր ՚ի մասեփայ ։ զի երդումն մեծ էր այնմ, որ ոչ ելանէր ՚ի մասեփայ. և ասեն՝ 6 թէ մահու մեռցի ։ * Եւ մխիթարեցան որդիքն իսրայէլի ՚ի վերայ բենիամինի եղբօր իւրեանց. և ասեն. բարձաւ 7 այսօր ցեղ մի յիսրայէլէ ։ * Եւ արդ զի՞նչ արասցուք մնացելոցն առանց կնանց ։ և մեք երդուաք ՚ի Տր՝ չտալ նոցա ՚ի 8 դստերաց մերոց կանայս ։ * Եւ ասեն. ո՞ ոք մի ՚ի ցեղիցն իսրայէլի. որ ոչ ել առ Տր ՚ի մասեփայ ։ և ահա չէր ոք եկեալ յաբիսայ գաղաադու ՚ի բանակ 9 եկեղեցւոյն ։ * Եւ էանց ՚ի հանդիսի ժողովուրդն. և ո՛չ գոյր անդ այր ՚ի տանէ յաբիսայ գաղաադու ։ 10 * Եւ առաքեցին անդր ժողովուրդն երկոտասան հազար արանց. յորդւոցն զօրութեան ։ և պատուիրեցին նոցա՝ և ասեն ։ երթա՛յք՝ և հարէք զբնակիչս յաբիսայ գաղաադու բերանով սուսերի. 11 և զկանայս և զժողովուրդն ։ * Եւ այս բան է զոր առնիցէք. ‖ զամ արու և զամ՝ կին. որ գիտիցէ զանկողինս 12 արուի, նզովեսջիք ։ * Եւ գտին ՚ի տանէ յաբիսայ գաղաադու չորեքհարիւր աղջիկ կոյս՝ որք ո՛չ գիտէին զայր յանկողինս արուի ։ և ածին զնոսա ՚ի բանակն ՚ի սելով՝ որ է յերկրին քանանու ։ 13 * Եւ առաքեաց ամ ժողովուրդն՝ և խօսեցան ընդ որդիսն բենիամինի՝ որք էին ՚ի վիմին ռեմոնայ. և կոչեցին զնոսա ՚ի խաղաղութիւն ։ 14 * Եւ դարձաւ բենիամին ՚ի ժամանակին յայնմիկ առ որդիսն իսրայէլի. և ետուն նոցա կանայս զայնոսիկ՝ որք էին ՚ի կանանցն յաբիսայ գաղաադու. և 15 հաճոյ թուեցաւ նոցա այնպէս ։ * Եւ ժողովուրդն մխիթարեցաւ ՚ի վերայ բենիամինի. զի արար Տր խրամատութիւն 16 ՚ի մէջ ցեղիցն իսրայէլի ։ * Եւ ասեն ծերք ժողովրդեանն՝ զի՞նչ արասցուք

‖ Թւոց 31. 17. և 18.

և

և մն̃ այլոց կանանցն . զի սատակե-
ցաւ կին 'ի բենիամինէ : * Եւ՛ ասեն . 17
ժառանգութիւն զերծեալ է 'ի բենիա
մինէ . և մի ջնջեսցի ցեղն յիլէ : *Եւ՛ 18
մեք ոչ կարեմք տալ նց կանայս 'ի
դստերաց մերոց . զի երդուեաք որդիք
իսրայէլի՝ և ասեմք . թէ անիծեալ
լիցի՝ որ տացէ կին բենիամինի : *Եւ՛ 19
ասեն . ահա տօն տն̃ է 'ի սելովայ աւ-
ուրց յաւուրս . որ է 'ի հիւսիսոյ բե-
թելայ . ընդ արևելս ճանապարհին՝
որ հանէ 'ի բեթելայ 'ի սիկիմ . և 'ի
հարաւոյ լիբանանու յեղեբոնայ :
*Եւ՛ պատուիրեցին որդւոցն բենիա 20
մինի՝ և ասեն . երթայք՝ և դարանա
մուտ լերուք յայգեստանին : *Եւ՛ 21
յորժամ տեսանիցէք թէ ելանեն
դստերք բնակչացն սելովայ պար
առեալ պարուք . ելջիք յայգեստա-
նացն . և յափշտակեսջիք այր իւրա-
քանչիւր զկին 'ի դստերաց սելովայ :
և երթիջիք յերկիրն բենիամինի :
22 * Եւ՛ եղիցի յորժամ գայցեն հարքն
նոցա կամ եղբարքն նոցա դատել
ընդ ձեզ , ասասցուք նոցա՝ թէ ողոր
մեցարուք նոցա . զի ոչ էառ այր զկին
իւր 'ի պատերազմին . և ոչ դուք ետուք
23 նոցա թէ յանցանք ինչ իցեն : * Եւ՛
արարին այնպէս որդիքն բենիամինի .
և առին կանայս ըստ թուոյ իւրեանց
'ի պարաւորացն՝ զորս յափշտակեցին .
և գնացին . և դարձան յիւրաքանչիւր
ժառանգութիւն իւրեանց , և շինեցին
քաղաքս՝ և բնակեցան 'ի նոսա :
24 *Եւ՛ գնացին որդիքն իսրայէլի 'ի ժա
մանակին յայնմիկ այր յիւրաքանչիւր
ցեղ իւր . և յազգատոհմ իւր . և ելին
անտի այր յիւրաքանչիւր ժառան-
գութիւն իւր : յաւուրսն յայնոսիկ
ոչ գոյր թագաւոր իսրայէլի . և այր
իւրաքանչիւր զհաճոյս աչաց իւրոց
առնէր :

# ԳԻՐՔ ՀՌՈՒԹԱՅ :

## Գլուխ Առաջներորդ :

ԵՒ ԵՂԵՒ 1
ՅԵՏ ԱՒՈՒ-
րնկ յաւուրս դա
տելոյ դատաւո-
րացն . եկն սով
յերկիրն . և գնաց
այր 'ի բեթղե-
հեմէ յուդայ՝
պանդխտանալ յագարակին մովաբայ-
ւոցն՝ և կին իւր . և երկու որդիք իւր :
* Եւ՛ անուն առն , եղիմելէք . և 2
անուն կնոջ նր̃ նոեմի . և անուն եր-
կոցունց որդւոցն նր̃ , մաալոն . և քել-
լոն . եփրաթացիք 'ի ցեղէ յուդայ : չո
գան յագարակն մովաբու : և անդ
էին : * Եւ՛ մեռաւ եղիմելէք այրն նոե- 3
մեայ : և մնաց կինն և երկու որդիք
նորա : * Եւ՛ առին իւրեանց կանայս 4
մովաբացիս : անուն միումն որփա . և
անուն երկրորդին հռութ : և բնակե
5 ցան անդ իբրև ամս տասն : *Եւ՛ մե
ռան անդ երկոքին . մաալոն . և քել-
լոն . և մնաց կինն միայն յառնէ իւր-
6 մէ և յորդւոց իւրոց : * Եւ յարեաւ
ինքն և երկոքին նուանք նր̃ . և դար-
ձան յագարակէն մովաբայ . զի լուան
թէ այց արար Տ̃ ժողովրդեան իւր
7 ում տալ նոցա հաց : *Եւ՛ ել 'ի տեղ
ւոջէն ուր էր . և երկոքին նուանք նր̃
ընդ նմա : և գնացին ճանապարհ դառ
8 նալ յերկիրն յուդայ : *Եւ ասէ նոե-
մի ցերկոսին նուանս իւր . երթայք՝
և դարձարուք յիւրաքանչիւր 'ի տուն
հօր իւրոյ . և արասցէ ընդ ձեզ Տէր
ողորմութի . որպէս արարիք ընդ մե-
9 ռեալսն և ընդ իս : *Տացէ ձեզ Տր̃՝ և
գտջիք հանգիստ իւրաքանչիւր 'ի
տան հօր իւրոյ : և համբուրեաց զն̃ :
ամբարձին զձայնս իւրեանց՝ և լացին
*Եւ՛

*Եւ ասեն ցնա . ոչ այդպէս . այլ ընդ 10
քեզ դարձցուք 'ի ժողովուրդ քո :
*Եւ ասէ Նոեմի . դարձարո՛ւք դստերք 11
իմ . ընդէ՞ր գայցէք ընդ իս : մի թէ
դարձեալ որդի՞ք իցեն յորովայնի ի-
մում . և լինիցին ձեզ յա՞րս : *Դար 12
ձարո՛ւք դստերք իմ, և երթայք : զի
ես ծերացեալ եմ, և չեմ լինելոց առն .
եթէ ասիցեմ թէ կայցէ ինչ ինձ ա-
ղերս՝ և լինիցիմ առն աշխարհակա-
նացեալ՝ և ծնանիցիմ որդիս : *Եւ 13
նոցա սպասիցէք մինչև զարգանայ-
ցեն . և 'ի նոսա գրաւիցիք չլինել
առն : մի՛ դստերք իմ . զի առաւել
քան զձեզ դառնացեալ եմ . զի ել
ընդ իս ձեռն Տն : * Եւ ամբարձին 14
զձայնս իւրեանց միւսանգամ, և լա-
ցին : և համբուրեաց Որփա զսկեսուր
իւր . և դարձաւ 'ի ժողովուրդ իւր :
բայց Հռութ գնաց զհետ նորա :*Եւ 15
ասէ Նոեմի ցՀռութ . ահա ներ քո
դարձաւ 'ի ժողովուրդ իւր՝ և առ աս
տուածս իւր . դարձի՛ր և դու զհետ
ներևին քոյ : * Եւ ասէ Հռութ . մի՛ 16
պատահեսցի ինձ թողուլ զքեզ և
դառնալ 'ի քէն : զի ուր դու երթայ-
ցես, երթայց . և ուր հանգչիցիս, հան
գեայց . ժողովուրդ քո՝ ժողովուրդ
իմ . և Ած քո՝ Ած իմ : *Եւ ուր մե- 17
ռանիցիս՝ մեռայց . և անդ թաղեցայց .
օնևօն արասցէ ինձ Տր՝ և օնևօն յաւ
ելցէ . բայց եթէ մահ մեկնեսցէ ընդ
իս և ընդ քեզ :*Եւ իբրև ետես Նոե 18
մի թէ պնդեալ է երթալ նա ընդ նմա .
դադարեաց այնուհետև 'ի խօսելոյ
ընդ նմա : *Եւ գնացին երկոքին մին 19
չև գալ նոցա 'ի Բեթղեհէմ : հնչեաց
ամ քաղաքն զնովաւ . և ասէին թէ սա
այսէ գե իցէ Նոեմի : *Եւ ասէ ցնոսա . մի՛ կո 20
ղեցիկ չէք զիս Նոեմի . այլ կոչեցէք զիս դառ
Մարա որէ նացեալ : զի դառնացոյց զիս բաձա-
կանն յոյժ : *Ես լի չոգայ . և ունայն 21
դարձոյց զիս Տր : և արդ ընդէ՞ր կո-
չէք զիս Նոեմի . և Տր նկուն արար զիս .
և բաձականն չարչարեաց զիս : *Եւ 22
դարձան Նոեմի և Հռութ մովաբացի
նու իւր ընդ նմա՝ գնացեալ յագարա
կէն Մովաբայ : և եկին 'ի Բեթղեհէմ
'ի սկզբան հնձոց գարւոյ :

## ԳԼ : Բ :

Եւ անդ էր այր ծանօթ առնն 1
Նոեմինայ . և այրն հզօր զօրու-
թբ . յազգէն Եղիմելէքայ . և անուն
նորա Բոոս : և ետ Նոեմինայ տուն
այրութե բնակելոյ 'ի նմա : *Եւ ասէ 2
Հռութ մովաբացի ցՆոեմի : երթայց
յանդ՝ և քաղեցից հասկ զհետ ուրուք՝
որոյ գտից շնորհս առաջի աչաց նորա
3 և ասէ ցնա՝ երթ դուստր : *Եւ գնաց .
և երթեալ քաղէր հասկ յանդի զհետ
հնձողացն . և դիպելով դիպեցաւ վի-
ճակի անդին Բոոսայ՝ ազգականի Եղի
4 մելէքայ : *Եւ ահա Բոոս եկն 'ի Բեթ
ղեհէմէ : և ասէ ցհնձօղս իւր . Տր ը
ձեզ : և ասեն ցնա . օրհնեսցէ զքեզ
5 Տր : *Եւ ասէ Բոոս ցպատանին իւր՝
որ կայր 'ի վերայ հնձողացն . ո՞յր է աղ
6 ջիկդ այդ : *Պատասխանի ետ պա-
տանին՝ որ կայր 'ի վերայ հնձողացն՝ և
ասէ . մովաբացի աղջիկն է՝ որ դար-
ձաւ ընդ Նոեմինայ յագարակէն Մո-
7 վաբայ : *Եւ ասէ . թո՛ղ քաղեցից՝ և
ժողովեցից հասկ 'ի մէջ որայոց զհետ
հնձողացդ . և եկն եկաց յառաւօտէ
մինչև ցայժմ . և ոչ դադարեաց՝ և ոչ
8 սակաւիկ ինչ յանդիս : *Եւ ասէ Բոոս
ցՀռութ . լո՛ւր դուստր . մի՛ այլուրեք
երթիցես քաղել հասկ յայլոց անդի ,
և մի՛ բնաւ ուրեք գնասցես աստի ,
այլ աստէն իսկ յարեա՛ց յաղջկունս
9 իմ : *Եւ աչք քո յանդիս ուր և հն-
ձեսցեն . և երթ իցես զհետ նոցա : ոչ
ապաքէն պատուէր ետու մանկտւոյ
իմում չմերձենալ 'ի քեզ . և եթէ ծա
րաւիցիս, երթիցես յամանսն՝ և արբ
ցես, ուստի հանիցեն ջուր մանկտիքդ :
10 *Եւ անկեալ 'ի վերայ երեսաց իւրոց
երկիրպագ յերկիր 'ի խոնարհ . և
ասէ . զի՞ է՝ զի գտի շնորհս առաջի
աչաց քոց ճանաչել զիս . և ես եմ կին
11 մի օտար : *Պատասխանի ետ Բոոս՝ և
ասէ ցնա : պատմելով պատմեցաւ ինձ
ամ ինչ՝ զոր արարեր սկեսրի քում
յետ մահուան առնն քում . և զիարդ
թողեր զհայր քո և զմայր . և զերկիր
ծննդեան քոյ . և եկիր 'ի ժողովուրդ՝
զոր ոչ գիտէիր յերէկ և յեռանդ :
12 *Հատուսցէ քեզ Տր ըստ վաստակոց
քոց . և եղիցին լի վարձք քո 'ի Տէ այ
Իղի . յոր դիմեցերն ապաստան լինիլ
13 ընդ թևօք նորա : *Եւ նա ասէ : գտի
շնորհս առաջի աչաց քոց տէր՝ զի մխի
թարեցեր զիս . և զի խօսեցար 'ի սիրտ
աղախնոյ քոյ . և ես եղէց իբրև զմի
14 յաղախնայցն քոց : * Եւ ասէ ցնա
Բոոս : ահա ժամ ճաշոյ է . մատիր
այսր՝ և կեր 'ի հացէդ . և թացցես
զպատառ քո 'ի քացախի : և նստաւ
Հռութ 'ի կողմանէ հնձողացն՝ և խառ-
նեաց նմա Բոոս փոխինդ . և եկեր . և
15 յագեցաւ . և եթող զնշխար : * Եւ
յարեաւ քաղել հասկ : և պատուիրեաց
Բոոս մանկտւոյ իւրում, և ասէ . այլև
'ի մէջ որայոցն քաղիցէ . և մի պատկա
16 ռեցուցանիցէք զնա : *Ալ բառնա-
լով

լով բարձուածիք. և արկանելով արկջիք առաջի նորա 'ի փոխանորդոյն խառնելոց. և թող տաջիք նմա, և կերիցէ՝ և քաղիցէ հասկ: և մի ինչ զգուշիցէք զնա: * 17 Եւ քաղեաց յանդին մինչև ցերեկոյ. և ծեծեաց՝ զոր քաղեացն: և եղև արդու մի գարւոյ: * 18 Եւ եառ՝ և եմուտ 'ի քաղաքն: եբերև եւեւս սկեսուրն նր՝ զոր քաղեացն. և եհան հռութ՝ և ետ նմա 'ի նշխարէն՝ յորոց յագեցաւն: * 19 Ասէ ցնա սկեսուրն իւր. ո՞ւր ժողովեցեր այսօր. և կամ ո՞ւր եղեր. եղիցի՝ որ ծանեաւն զքեզ՝ օրհնեալ: և պատմեաց հռութ սկեսրին իւրոյ թէ ուր եղև: և ասաց զանունն առն առ որում եղև յայն օր՝ թէ բոոս է: * 20 Ասէ նոեմի ցնու իւր. օրհնեալ է նա 'ի Տէ. զի ոչ պակասեցոյց զգութ իւր 'ի կենդանեաց և 'ի մեռելոց: և ասէ ցնա նոեմի. մերձ է այրն 'ի մեզ. 'ի մերձաւորաց մերոց է: * 21 Եւ ասէ հռութ ցսկեսուրն իւր՝ իբաւ է: ասաց ցիս թէ յաղջկունս իմ յարեաց, մինչև վախճանեսցեն զհունձս՝ որ չափ իցեն իմ: * 22 Եւ ասէ նոեմի ցհռութ նու իւր. բարի է դուստր. զի եղեր ընդ աղջկունս նր. և մի պատահիցի ոք քեզ յայլում անդի: * 23 Եւ յարեցաւ հռութ յաղջկունսն բոոսայ քաղել հասկ՝ մինչև վախճանիլ հնձոցն գարեաց. և հնձոց ցորենոյ: և նստաւ առ սկեսրի իւրում:

## Գլ: Գ:

1 Եւ ասէ ցնա նոեմի սկեսուր իւր. դուստր՝ խնդրեցից քեզ հանգիստ՝ զի բարի լինիցի քեզ: * 2 Եւ արդ ոչ ապաքէն բոոս ծանօթ մեր է. որոյ էիր ընդ աղջկունս նորա. ահաւասիկ նա արկանէ զկալ 'ի գարւոյ 'ի գիշերիս յայսմիկ: * 3 Եւ դու լուացիս՝ և օծցիս. և արկցես զհանդերձ քո զքև՝ և ելցես 'ի կալն. և մի տացես առնն ծանօթս. մինչև վախճանեսցէ ուտել և ըմպել իւր: * 4 Եւ եղիցի 'ի ննջելն նր 'ի քուն. նշմարեսցես զտեղին ուր ննջիցէ. և երթիցես. և բացցես յոտից կողմանէ՝ և ննջիցես. և նա պատմեսցէ քեզ զինչ առնելոց իցես: * 5 Եւ ասէ ցնա հռութ. զամ զոր ինչ ասասցես ցիս՝ արարից: * 6 Եւ էջ 'ի կալն. և արար ըստ ամի որպէս պատուիրեաց նմա սկեսուրն իւր: * 7 Եկեր բոոս՝ և էարբ՝ և զուարթացաւ սիրտ նր. և չոգաւ՝ ննջեաց առ եզերբ գաղձին. և նա եկն գաղտ. և մերկացոյց յոտից կողմանէ՝ և ննջեաց: * 8 Եւ եղև զհաւ սարականծաւ գիշերոյն. զարհուրեցաւ այրն՝ և խռովեցաւ. և ահա կին մի ննջէր առ ոտիւք նորա: * 9 Եւ ասէ. ո՞վ ես դու: և ասէ. ես եմ հռութ աղախին քո. և արկցես զդրօշակ քո զաղախնաւ քով. զի մերձաւորիչ ես դու: * 10 Եւ ասէ բոոս: օրհնեալ ես դու 'ի Տէ Այ դուստր՝ զի աղնուացուցեր դու զգութ քո զվերջինս քան զառաջինն. և զի ոչ չոգար զհետ երիտասարդաց. աղքատաց՝ կամ մեծամեծաց: * 11 Եւ արդ դուստր՝ մի երկնչիր. զամ զորինչ ասասցես ցիս՝ արարից քեզ. քանզի գիտէ ամ ցեղ ժողովրդեանն իմոյ՝ եթէ կին զօրութեան ես դու: * 12 Եւ արդարև եմ ես մերձաւորիչ քո. բայց գոյ և այլևս մօտ մերձաւորիչ՝ մօտագոյն քան զիս: * 13 Ագիր աստ զգիշերս զայս. և եղիցի այգուն. եթէ մերձաւորեցուսցէ զքեզ մերձաւորիչն՝ բարի է: ապա թէ ոչ կամիցի մերձաւորեցուցանել զքեզ. ես մերձաւորեցուցից զքեզ՝ կենդանի է Տր. ննջեա այդր մինչև ցառաւօտ: * 14 Եւ յարեաւ կինն՝ մինչչև ճանաչէր այր զընկեր իւր: և ասէ բոոս. մի ոք գիտասցէ՝ թէ կին ոք եկն առ իս 'ի կալս: * 15 Բեր զմեկնոցդ՝ որ 'ի վերայ քո է՝ և կա՛լ աստ. և նա կալաւ. և չափեաց վեց չափոյն գարի. և եդ 'ի վր նորա. և եմուտ 'ի քաղաքն: * 16 Եւ չոգաւ հռութ առ սկեսուրն իւր. և նա ասէ. զի՞ է դուստր: և պատմեաց նմա զամ ինչ՝ զոր արար նմա այրն: * 17 Եւ ասէ ցնա. զայս զվեց չափ գարւոյ ետ ինձ՝ և ասէ. զի մի մտցես ունայնաձեռն առ սկեսուրն քո: * 18 Եւ նա ասէ. նիստ դու՝ մինչև յայտ լինիցի մեզ. որպէս զի ոչ վրիպի բանն. զի ոչ դադարի այրն՝ թէ ոչ կատարէ սոյն օրին զբանն:

## Գլ: Դ:

1 Եւ բոոս ել 'ի դուռն՝ և նստաւ անդ: և ահա անցանէր առ նովաւ մերձաւորիչն՝ զորմէ խօսեցաւ բոոս: և ասէ ցնա բոոս՝ ա՛նց՝ և նիստ աստ վայր մի և ամոմի. և նա էանց՝ և նստաւ: * 2 Եւ էառ բոոս տասն այր 'ի ծերոց քաղաքին՝ և ասէ. նստարուք աստ. և նստան: * 3 Եւ ասէ բոոս ցմերձաւորիչն. զբաժին անդոյ՝ որ է եղբօր մերոյ եղիմելեքայ՝ վաճառէ նոեմի. որ դարձեալն է յագարակէն մովաբայ. և ես ասացի՝ թէ յայտնեցից յունկն քո: արդ ստացիր առաջի սց՝ որք նստին՝ և առաջի ծերոց ժողովրդեան իմոյ: արդ եթէ մերձաւորեցուցանես՝ մերձաւորեա: ապա թէ ո՛չ մերձաւորեցուցանես, պատմեա՛

ինձ և գիտասցիր. զի ոչ գոյ բաց 'ի քէն մերձաւորարար. և յետ քո ես եմ մերձաւորիչ։ 5 *Եւ ասէ Բոոս. յաւուր ստանալոյ քոյ զագարակն 'ի ձեռաց Նոեմինայ. և 'ի Հռութայ մովաբացւոյ կնոջ մեռելոյն. և զնա պարտիս ստանալ՝ և յարուցանել զանուն մեռելոյն 'ի ժառանգութե իւրում։ 6 *Եւ ասէ մերձաւորիչն ցԲոոս. ոչ կարեմ մերձաւորեցուցանել ես ինձ. գուցէ եղծանիցեմ զժառանգութի իմ. մերձաւորեա դու քեզ զմերձաւորութի. զի ես ոչ կարեմ մերձաւորեցուցանել։ 7 *Եւ այս օրէն էր յառաջագոյն 'ի մէջ Իղի վս մերձաւորութե. և վս գնելոյ. առ 'ի հաստատելոյ զամ բանս բոկանայր այր զկօշիկ իւր՝ և տայր ցընկեր իւր՝ որ մերձաւորելոց էր ըղ մերձաւորութի նորա. և այն լինէր 'ի վկայութի 'ի մէջ Իղի։ 8 *Եւ ասէ մերձաւորիչն ցԲոոս. ստացի՛ր դու քեզ զմերձաւորութի իմ. և բոկացաւ զկօշիկ իւր, և ետ ցնա։ 9 *Եւ ասէ Բոոս ցծերսն, և ցամ ժողովուրդն. վկայք իմ էք դուք այսօր. զի ստացայ զամ ինչս Եղիմելէքայ. և զամ ինչ որ է Քելիոնայ, և Մաալոնայ 'ի ձեռաց Նոեմինայ։ 10 *Նաև զՀռութ մովաբացի զկին Մաալոնայ ստացայ ինձ կնութե։ կանգնել զանուն մեռելոյն 'ի ժառանգութե իւրում. և մի ջնջեսցի անուն մեռելոյն յեղբարց իւրոց՝ և 'ի ցեղէ տեղւոյ իւրոյ. և վկայք դուք էք այսօր։ 11 *Պատասխանի ետ ամ ժողովուրդն 'ի դրանն՝ և ասեն. մեք եմք վկայք։ և ծերքն ասեն։ տացէ Տր զկինն՝ որ մտանէ 'ի տուն քո. իբրև զՀռաքէլ՝ և իբրև զԼիա. որք շինեցին երկոքին զտունն Իղի. առնել զօրութի յեփրաթայ. և կոչել զանուն 'ի Բեթղեհեմ։ 12 *Եւ եղիցի տուն քո իբրև զտունն փարեսի. զոր ծնաւ Թամար յուդայի յայնմ զաւակէ. և տացէ քեզ Տր որդի յաղջկանէդ յայդմանէ։ 13 *Եւ էառ Բոոս զՀռութ. և եղև նմա 'ի կնութե. և եմուտ առ նա. և ետ նմա Տր զյղութի. և ծնաւ զորդի։ 14 *Եւ ասեն կանայքն ցՆոեմի. օրհնեալ Տր՝ որ ոչ քակեաց 'ի քէն այսօր զմերձաւորիչն. անուանել զանուն քո 'ի մէջ Իղի։ 15 *Եւ եղիցի քեզ 'ի դարձուցանել զոգի. և կերակրել զծերութի քո. զի նու քո՝ որ սիրեաց զքեզ՝ ծնաւ զորդի՝ որ լաւ է քեզ քան զեօթն որդի։ 16 *Եւ էառ Նոեմի զմանուկն՝ և եդ 'ի ծոց իւր. և եղև նմա դայեակ։ 17 *Եւ կոչեցին զանուն նմա դրացիքն՝ և ասեն. ծնաւ որդի Նոեմինայ. և կոչեցին զանուն նորա ովբէդ։ նա է հայր յեսսեայ հօր դաւթի։

18 *Եւ այսոքիկ են ծնունդք փարեսի։ 19 փարէս ծնաւ զեսրոմ։ *Եւ եսրոմ ծնաւ զարամ։ արամ ծնաւ զամինադաբ։ 20 *Ամինադաբ ծնաւ զնաասոն. նաասոն ծնաւ զսաղմոն։ 21 *Սաղմոն ծնաւ զԲոոս։ Բոոս ծնաւ 22 զօբէթ։ *Օբէթ ծնաւ զյեսսէ։ յեսսէ ծնաւ զդաւիթ։

Բ. Օրէ. 25. 7.

Ծննդ. 38. 29.

Ա. Մն. 2. 5. և 4. 1.

Մտթ. 1. 3.

Գ.Ի.Ր.Ք.



Եւ Աննա ցաւագին անձամբ էկաց յաղօթս առ Տր, եւ էլաց լալով։ 1. Թագ. 1.10.



Եւ էառ Սամուէլ զեղջիւր իւղոյ, եւ էօծ զնա ՚ի մէջ եղբարց իւրոց։ 1. Թագ. 16.13.

# ԳԻՐՔ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ՍԱՄՈՒԷԼԻ։

## ԶՈՐ ՄԵՔ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ ԱՍԵՄՔ։

Գլուխ Առաջներորդ։

1 ԵՒ ԱՅՐ ՄԻ ԷՐ ՅԱ րիմաթեմայ, ՚ի սիփայ՝ ՚ի լեռնէ Եփրեմի. եւ անուն նր Եղկանա. որդի յերեմի ելի որդւոյ Հեղեայ որդւոյ Թոլկեայ ՚ի Նասիփ Եփրեմի։ 2 * Եւ էին նր երկու կանայք. անուն միումն Աննա. եւ անուն երկրորդին Փենանա. եւ էին Փենանայի որդիք. եւ Աննայի ոչ գոյր որդի։ 3 * Եւ ելանէր այրն աւուրց յաւուրս ՚ի քաղաքէ իւրմէ յԱրիմաթեմայ՝ եր կիրպագանել, եւ զոհել Տն Ած զօ-րութեանց ՚ի Սելով. եւ էին անդ Հեղի՝ եւ երկու որդիք նր Ոփնի եւ Փենեէս՝ 4 քահանայք Տն։ * Եւ եղեւ օր մի՝ եւ զոհեաց Եղկանա. եւ ետ Փենանայի կնոջ իւրում, եւ ուստերաց նորա՝ եւ 5 դստերաց նորա մասունս։ * Եւ Աննայի ետ մասն մի. զի ոչ գոյր նորա որդի. բայց զԱննա սիրէր Եղկանա առաւել քան զՓենանա. եւ Տէր փա-6 կեաց զարգանդ նորա։ * Զի ոչ ետ նմա Տր որդի ըստ նեղութեն իւրում. եւ ըստ տրտմութեն անձին իւրոյ. եւ տրտմեալ էր վն այնորիկ՝ զի փակեաց Տր զարգանդ նր առ ՚ի չտալոյ նմա 7 զորդի։ * Եւ այնպէս առնէր ամի ամի յելանելն նորա ՚ի տուն Տն. եւ տրտ-8 մէր՝ եւ լայր՝ եւ ոչ ուտէր։ * Եւ ասէ ցնա Եղկանա այր իւր. Աննա։ եւ ասէ ցնա. աւասիկ եմ տէր։ եւ ասէ ցնա. զի՞ է քեզ. զի՞ լաս. եւ ընդէ՞ր ոչ ու-

տես . և ընդէ՞ր հարկանէ զքեզ սիրտ
քո : ո՞չ լաւ եմ ես քեզ քան զտասն
որդի : * Եւ յարեաւ աննա յետ ուտե- 9
լոյ նր 'ի սելով . և եկաց առաջի Տն :
և հեղի քահանայ նստէր աթոռով
առ սեամս տաճարին Տն : * Եւ նա՝ 10
ցաւագին անձամբ եկաց յաղօթս առ
Տր : և ելաց լալով՝ և ասէ : * Ադոնա 11
Տր ելովէ սաբաւօթ : եթէ հայելով
հայեսցիս 'ի տառապանս աղախնոյ
քոյ՝ և յիշեսցես զիս . և տացես աղախ
նոյ քում զաւակ առն, տաց զնա նուէր
առաջի քոյ մինչև յօր մահուն իւրոյ .
զգինի և զարբեցութի մի արբցէ . և
երկաթ մի ելցէ 'ի գլուխ նր : * Եւ 12
եղև իբրև յաճախեաց կալ յաղօթս
առաջի Տն . և հեղի քահանայ միտ
դնէր բերանոյ նորա : * Եւ շրթունք 13
իւր ո՛չ շարժէին . և բարբառ իւր ո՛չ
լինէր լսելի : և լուաւ նմա Տր : և հա
մարեցաւ զնա հեղի արբեալ : * Եւ 14
ասէ ցնա պատանեակն հեղեայ . մին-
չև յե՞րբ կայցես յարբեցութե . թա
փեա 'իքէն զգինիդ քո . գնա յերե-
սաց Տն : * Եւ պատասխանի ետ ան- 15
նա՝ և ասէ . ո՛չ այդպէս տէր . այլ կին
վշտագնեալ եմ ես ոգւով . և գինի՝
և արբեցութի ո՛չ է իմ արբեալ . և
հեղում զանձն իմ՝ առաջի Տն : * Մի՛ 16
համարիր զաղախին քո դուստր ժանտ՝
զի 'ի բազում տրտմութե իմմէ վա-
րանեալ կամ մինչև ցայժմ : * Եւ տա 17
նմա պատասխանի հեղի՝ և ասէ . երթ
'ի խաղաղութի . և Ած իլի տացէ քեզ
զամ խնդրուածս քո՝ զորս խնդրեցեր
'ի նմանէ : * Եւ ասէ աննա . եգիտ ա- 18
ղախին քո շնորհս առաջի քո : և գնաց
կինն զճանապարհս իւր . և եմուտ 'ի
վանս իւր՝ և եկեր ընդ առն իւրում,
և խօսեցաւ . և երեսք իւր այլ ո՛չ ևս
տխրեցան : * Եւ կանխեցին ընդ ա- 19
ռաւօտն՝ և երկիրպագին Տն և գնա
ցին զճանապարհս իւրեանց : և եմուտ
եղկանա 'ի տուն իւր յարիմաթեմ . և
մերձեցաւ առ աննա կին իւր : և յի-
շեաց զնա Տր . և յղացաւ : * Եւ եղև 20
'ի ժամանակի աւուրց . և ծնաւ որ-
դի . և կոչեաց զանուն նր սամուէլ :
ասէ . զի 'ի Տէ Այ զօրութեց խնդ-
րեցի զսա : * Եւ ել այր նր եղկանա 21
և ամ տուն նր զոհել 'ի սելով զզոհ
աւուրց . և զուխտս իւր . և զամ տա-
սանորդս իւր տարւոյ : * Եւ աննա ո՛չ 22
ել ընդ նմա : զի ասաց ցայր իւր՝ թէ
մինչև ելցէ անդր մանուկս յորժամ
հատուցից զդա 'ի ստենէ . և յանդի-
ման լիցի առաջի Տն և նստցի անդ
մինչև յյաւիտեան : * Եւ ասէ ցնա 23

Եւ շրթ- ունք իւր միայն շարժէին

եղկանա այր իւր . արա՛ որպէս ինչ
բարի թուի առաջի աչաց քոց . նիստ
աստէն . մինչև հատուսցես զդա 'ի
ստենէ . և Տր հաստատեսցէ՝ որ ինչ
ել 'ի բերանոյ քումմէ : և նստաւ կինն՝
և սնոյց զորդին իւր՝ մինչև հատոյց
24 զնա 'ի ստենէ : * Եւ ել ընդ նմա 'ի
սելով . երեմենեաւ զուարակաւ . և
պանիւք՝ և արդուաւ նաշհոյ . և սա
փորով գինւոյ . և մտին 'ի տուն Տն
'ի սելով . և մանուկն ընդ նոսա :
25 * Եւ մատուցին առաջի Տն . և սպան
հայրն նր զզոհն՝ զոր առնէր աւուրց
յաւուրս Տն՝ և մատոյց զմանուկն . և
սպան զզուարակն վն փրկութե ման
26 կանն : * Եւ մատոյց աննա մայր ման
կանն զմանուկն առ հեղի . և ասէ :
յիս Տր իմ . կենդանի է անձն քո . ես
այն կին եմ, որ կայի առաջի քո՝ ընդ
27 քեզ : * Կալ յաղօթս առ Տր վն ման
կանս այսորիկ : և ետ Տր զխնդրու-
ածս իմ, զորս խնդրեցի 'ի նմանէ :
28 * Եւ տամ զդա փոխ Տն՝ զամ աւուրս
որչափ և կեցցէ : և եղիցի դա փոխ Տն .
և պագին երկիր անդ Տն : և յաղօթս
եկաց աննա՝ և ասէ :

## Գլ : Բ :

1 Հաստատեցաւ սիրտ իմ 'ի Տր և
բարձրացաւ եղջիւր իմ յԱծ իմ
ընդարձակեցաւ բերան իմ 'ի վերայ
թշնամեաց իմոց . ուրախ եղէ 'ի փր-
2 կութե քում : * Զի ո՛չ գոյ ոք իբրև
զՏր . և ո՛չ արդար՝ իբրև զԱծ մեր .
3 և ո՛չ գոյ ոք բաց 'իքէն : * Մի՛ պար-
ծիք՝ և մի՛ խօսիք զամբարտաւանս . և
մի՛ ելցէ մեծաբանութի 'ի բերանոյ
ձերմէ : զի Ած գիտութեց Տր, և Ած
պատրաստէ զարուեստս իւր ,
4 * Աղեղունք հզօրաց տկարացան . և
5 տկարք զգեցան զզօրութի : * Լցեալք
հացիւ նուաղեցան . և քաղցեալք
բնակեցան յերկրի : զի ամուլն ծնաւ
եօթն . և բազմածինն նուաղեցաւ
6 յորդւոց : * Տր մեռուցանէ՝ և կե- Բ. Օրէ.
ցուցանէ . իջուցանէ 'ի դժոխս՝ և հա 32. 39.
7 նէ : * Տր աղքատացուցանէ՝ և մե- Տոբ.
ծացուցանէ . խոնարհեցուցանէ՝ և 13. 2.
8 բարձրացուցանէ : * Կանգնէ յերկրէ Իմա.
զտնանկն , և յարուցանէ զաղքատն 16. 13.
յաղբեւաց : նստուցանել զնոսա ընդ
զօրաւորս ժողովրդեան . և զաթոռ
փառաց ժառանգեցուցանէ նոցա :
9 * Տայ զուխտս ուխտաւորի . և օրհ-
նեաց զամս արդարոյ : զի ո՛չ իւրով
զօրութբ զօրանայ այր հզօր . Տր տկար
առնէ զհակառակորդս իւր՝ Տր սբ է :
(Մի՛ պարծեսցի իմաստունն յիմաս-
տու-

տութՆ իւր ․ և մի պարծեսցի հզօրն 'ի զօրութՆ իւր ․ և մի պարծեսցի մեծատունն 'ի մեծութիւն իւր ։ այլ այնու պարծեսցի՝ որ պարծիցի ․ իմանալ և ճանաչել զՏր ։ և առնել զիրաւունս և զարդարութՆ 'ի մէջ երկրի ։ ) * Տր 10 ել յերկինս՝ և որոտաց ․ և ինքն դատէ զծագս երկրի՝ որ արդարն է ։ տայ զզօրութՆ թագաւորաց մերոց ․ և բարձր բարձրացուսցէ զեղջիւր օծելոյ իւրոյ ։

* Եւ թողին զնա անդ առաջի Տն և 11 գնացին յարիմաթեմ՝ 'ի տուն իւրեանց ։ և մանուկն սամուէլ կայր 'ի սպասու երեսաց Տն՝ առաջի հեղեայ քահանայի ։ * Եւ որդիքն հեղեայ քա 12 հանայի՝ որդիք ժանտք ․ և ոչ ճանաչէին զՏր ։ * Եւ իրաւունք քահանային 13 էին առ 'ի ժողովրդենէն՝ յամէ զոր զոհէր ։ գայր մանուկ քահանային մինչ դեռ եփիւր միսն ․ և երեքժանի մսահան 'ի ձեռին իւրում ։ * Եւ արկանէր զայն յաւազան ․ կամ 'ի սան մեծ 14 պղնձի՝ կամ 'ի պտուն ․ և զամ որինչ գայր 'ի մսահանն , առնոյր իւր քահանայն ։ ըստ այսմ օրինակի առնէին ամ իՂի , որք գային զոհել 'ի տուն Տն 'ի սելով ։ * Եւ մինչև ճարպն ծխածե 15 րեալ էր ․ գայր մանուկ քահանային ․ և ասէր ցայրն՝ որ զոհէրն ․ տուր միս խորովելոյ քահանային ․ և ոչ առնում 'ի քէն միս եփեալ 'ի սանէ ։ * Եւ ա 16 սէր այրն՝ որ զոհէր ։ ծխածխեսցի նախ ճարպն՝ ըստ և օրէնէ ․ և ապա առցես քեզ յամէ՝ որոց և ցանկասցի անձն քո ։ և նա ասէր ․ ոչ ․ բայց եթէ արդ տայցես ։ և եթէ ոչ տաս՝ ուժգին առից ։ * Եւ էին այն մեղք մեծա 17 մեծք յոյժ մանկանցն առաջի Տն ․ զի արհամարհէին արքն զզոհ Տն ։ * Եւ 18 սամուէլ մանուկ՝ պաշտէր առաջի Տն ․ արկեալ զիւրև եփուտ ։ * Եւ 19 կրկնոց փոքրիկ առնէր նմա մայրն իւր՝ և տանէր նմա աւուրց յաւուրս ․ յելանել ընդ առն իւրում զոհել զզոհ աւուրցն ։ * Եւ օրհնեաց հեղի զեղ 20 կանա և զկին նորա ․ և ասէ ․ հատուսցէ քեզ Տր զաւակ 'ի կնոջէդ յայդմանէ փոխանակ փոխոյն՝ զոր ետուր Տն ։ և գնաց այրն 'ի տեղի իւր ։ * Եւ այց 21 արար Տր աննայի ․ և յղացաւ՝ և ծնաւ ևս երիս ուստերս և երիս դստերս ։ և մեծացաւ մանուկն սամուէլ առաջի Տն ։ * Եւ հեղի ծերացեալ էր յոյժ ․ 22 և լսէր զամենայն ինչ՝ զոր առնէին որդիք նր՝ ընդ որդիս իՂի ։ և որպէս ննջեցուցանէին զկանայս ուխտաւորս առ դրան խորանին վկայութՆ ։ * Եւ 23 ասէ ցնոսա ։ ընդէ՞ր առնէք ըստ բանին ըստ այնմիկ , զոր ես լսեմ բանս 'ի բերանոյ ամ ժողովրդեանն Տն ։

24 * Մի՛ որդեակք ․ զի ոչ է բարւոք լուրն՝ զոր ես լսեմ ․ առ 'ի չծառայե 25 լոյ ժողովրդեանն Այ ։ * Զի եթէ մեղանչելով մեղանչիցէ այր առն՝ կացցեն յաղօթս վն նորա առ Տր ։ և եթէ Տն մեղանչիցէ , ով կացցէ յաղօթս վն նր ։ և ոչ լսէին ձայնի հօրն իւրեանց ։ զի կամելով կամէր Տր եղ 26 ծանել զնս ։ * Եւ մանուկն սամուէլ երթայր՝ և մեծանայր ։ և հաճոյ էր 27 Այ և մարդկան ։ * Եւ եկն հրեշտակ Այ առ հեղի՝ և ասէ ․ այսպէս ասէ Տր ․ յայտնելով յայտնեցայ ամ տան հօր քոյ ։ մինչդեռ էին նոքա յերկրին եգիպտացւոց՝ ծառայք տան փարա 28 ւոնի ։ * Եւ ընտրեցի զտուն հօր քոյ յամ դատաստանացն իՂի քահանայանալ ինձ ․ և ելանել առ սեղանն իմ ․ արկանել խունկս ․ և կրել զեփուտն առաջի իմ ։ և ետու տան հօր քոյ զամ զառ 'ի հրոյն որդւոցն իՂի 'ի կերա 29 կուր ։ * Եւ ընդէ՞ր հայեցար 'ի խունկս իմ , և 'ի զոհս իմ ժպիրհ ակամբ ։ և փառաւորեցեր զորդիսն քո քան զիս ։ օրհնելով զպտուղ ամենայն զոհիցն 30 իՂի՝ որ է առաջի իմ ։ * Վն այդորիկ այսպէս ասէ Տր Այ իՂի ‖ ասացի՝ թէ տուն քո՝ և տուն հօր քոյ շրջեսցին առաջի իմ մինչև ցյաւիտեան ։ և արդ՝ ասէ Տր ․ քա՛ւ լիցի ինձ ․ այլ զփառաւորիչս իմ փառաւորեցից ։ և որ արհամարհէն զիս՝ անարգեսցի ։

‖3 Թագ 2.27.

31 * Ահա աւուրք եկեսցեն ․ և սատակեցից զզաւակ քո ․ և զզաւակ տան հօր քոյ ։ և մի եղիցի ծեր 'ի տան քում ։ 32 * Եւ հայեսցիս ստէպ կողկողագին յամ բարութիւնս՝ զորս արասցէ Տէր Այ իՂի ․ և մի եղիցի ծեր 'ի տան 33 քում զամ աւուրս ։ * Եւ այլ ոչ սատակեցից 'ի սեղանոյ իմմէ ․ առ 'ի սորելոյ աչաց իւրոց ․ և մաշելոյ զանձն նր ։ և ամ մնացորդք տան քոյ անկցին 34 սրով արանց ։ * Եւ այն նշանակ լիցի քեզ՝ որ եկեսցէ 'ի վերայ երկոցունց որդւոցն քոց ոփնեայ և փենեհէսի ․ 'ի միում աւուր մեռցին երկոքեան ։ 35 * Եւ յարուցից ինձ քահանայ հաւատարիմ ․ որ զամենայն ինչ որ 'ի սրտի իմում և յանձին իմում , արասցէ ։ և շինեցից նմա զտուն հաւատարիմ ։ և շրջեսցի առաջի օծելոյ իմոյ զամե 36 նայն աւուրս ։ * Եւ եղիցի՝ ամենայն որ մնայցէ 'ի տան քում , եկեսցէ երկիր պագանել նմա վասն դանգի միոյ արծաթոյ , և նկանակի միոյ հացի ։ և ասիցէ ․ ընկեա զիս 'ի մե_

ղի

զի մի քահանայութեան քոյ . զի կե_
րայց զհաց :

## ԳԼ: Գ:

Եւ մանուկն սամուէլ կայր 'ի սպա 1
սու Տն առաջի հեղեայ քահա_
նայի : և բան Տն պատուական էր
յաւուրսն յայնոսիկ . և ոչ գոյր տեսիլ
որ գուշակէր : * Եւ եղև յաւուր յայն 2
միկ՝ ննջէր հեղի 'ի տեղւոջ իւրում .
և աչք նորա սկսան ծանրանալ . և ոչ
կարէր տեսանել : * Եւ ճրագն Այ 3
չևևս էր անցեալ : և սամուէլ ննջէր 'ի
տաճարին Տն ուր էր տապանակն Այ :
* Եւ կոչեաց Տր՝ և ասէ . սամուէլ 4
սամուէլ : և ասէ . ահաւասիկ եմ : * Եւ 5
ընթացաւ առ հեղի՝ և ասէ . ահաւասիկ
եմ ես՝ զի՞ կոչէիր զիս : և ասէ . ոչ
կոչեցի զքեզ . դարձի՛ր անդրէն՝ և
ննջեա՛ և դարձաւ անդրէն՝ և ննջեաց :
* Եւ յաւել Տր միւսանգամ կոչել՝ և 6
ասէ . սամուէլ՝ սամուէլ : և յարեաւ
սամուէլ՝ և չոգաւ առ հեղի երկրորդ-
անգամ, և ասէ : ահաւասիկ եմ . զի՞ կո
չեցեր զիս : և ասէ . ոչ կոչեցի զքեզ
որդեակ իմ . դարձի՛ր անդրէն՝ և ննջեա՛ : * Եւ սամուէլ նախ անծանօթ 7
էր Այ . և չևևս յայտնեալ էր նմա
բան Տն : * Եւ յաւել Տր միւսանգամ 8
կոչել զսամուէլ յերրորդում նուա_
գին : և յարեաւ՝ և չոգաւ առ հեղի՝ և
ասէ . ահաւասիկ եմ ես՝ զի՞ կոչէիր զիս :
և իմացաւ հեղի՝ թէ Տէր կոչէ զմա_
նուկն : * Եւ ասէ հեղի ցսամուէլ : 9
դարձի՛ր անդրէն՝ և ննջեա՛ որդեակ .
և եղիցի, եթէ կոչեսցէ զքեզ, ասաս
ցես . խօսեա՛ց Տր՝ զի լսէ՛ ծառայ
քո : և գնաց սամուէլ՝ և ննջեաց 'ի տեղ
ւոջ իւրում : * Եւ եկն Տր՝ եկաց 'ի 10
վերայ՝ և կոչեաց զնա . որպէս միանգամն
և միւսանգամ . սամուէ՛լ, սամուէլ :
և ասէ սամուէլ : խօսեա՛ց Տր . զի լսէ՛
ցէ ծառայ քո : * Եւ ասէ Տր ցսա_ 11
մուէլ . ահա՛ ես առնեմ զբանս իմ 'ի
մէջ իէլի . որպէս զի ամենայնի՝ որ լսիցէ
զնոսա՝ հնչեսցեն երկոքեան ականջք
իւր : * Յաւուր յայնմիկ յարուցից 'ի 12
վն հեղեայ զամ ինչ՝ զոր խօսեցայ 'ի
վերայ տանն նր : սկսայց, և կատարե_
ցից : * Որպէս պատմեցի նմա . եթէ 13
խնդրեցից զվրէժ 'ի տանէ նր մինչև
ցյաւիտեան : վն անօրէնութե որդ_
ւոյն նր . զի հայհոյէին զԱծ որդիք
նր . և նա ոչ խրատէր զնոսա : * Եւ 14
ոչ այնպէս : այլ երդուա՛յ տանն հե_
ղեայ . թէ ոչ քաւեսցի անօրէնութի
տանն հեղեայ խնկովք և զոհիւք մին
չև յաւիտեան : * Եւ ննջեաց սամուէլ 15
մինչև ցառաւօտն : և կանխեաց ընդ
առաւօտն . և եբաց զդրունս տանն
Տն : և սամուէլ երկեաւ պատմել զտե
սիլն հեղեայ : * Եւ ասէ հեղի ցսա_ 16
մուէլ : սամուէլ որդեակ : և ասէ .
ահաւասիկ ես : * Եւ ասէ . զի՞նչ է բանն 17
խօսեցեալ ընդ քեզ : մի՛ թաքուցաներ
յինէն : օ՛նև օ՛ն արասցէ ընդ քեզ Այ .
և օ՛նև օ՛ն յաւելցէ՝ եթէ թաքուցես
յինէն զբան մի յամ բանից խօսեցե_
լոց յականջս քո : * Եւ պատմեաց 18
նմա սամուէլ զամ զբանսն . և ոչ թա
քոյց 'ի նմանէ : և ասէ հեղի : Տր որ
ինչ բարւոք է առաջի իւր՝ ինքն արաս_
ցէ : * Եւ մեծացաւ սամուէլ : և էր 19
Տր ընդ նմա . և ոչ անկաւ յամ բանից
նր 'ի գետին : * Եւ գիտաց ամենայն 20
իէլ 'ի դանայ մինչև ցբերսաբէէ . թէ
հաւատարիմ է սամուէլ 'ի մարգարէս
Տն : * Եւ յաւել Տր գուշակել 'ի սե 21
լով . թէ յայտնեցաւ Տր սամուէլի 'ի
սելով ըստ բանին Տն : և հաւատա_
րիմ եղև սամուէլ՝ լինել 'ի մարգա_
րէս Տն յամ իէլ : ('ի ծագաց երկրին
մինչև ցծագս : և հեղի ծերացեալ էր
յոյժ : և որդիք նր երթային երթա_
լով՝ և չար էր ճանապարհ նոցա :)

## ԳԼ: Դ:

Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնո_ 1
սիկ . ժողովեցին այլազգիքն 'ի վր
իէլի : և ել իէլ ընդդէմ նց 'ի պատե
րազմ . և բանակեցան յաբենեզեր : և
այլազգիքն բանակեցան յափեկ :
* Եւ ճակատեցին այլազգիքն ընդդէմ 2
իէլի : և խմբեցաւ պատերազմն : և
պարտեցաւ այր իէլի յերեսաց այլազ
գեացն : և հարան 'ի ճակատու անդ
չորք հազարք արանց : * Եւ եկն զօրն 3
'ի բանակն : և ասեն ծերքն իսրայէլի .
ընդէ՞ր արդեօք պարտեաց զմեզ Տէր
այսօր առաջի այլազգեացն : առցուք
առ մեզ 'ի սելովայ զտապանակ ուխ_
տին Այ մերոյ . և ելցէ 'ի միջի մե_
րում ; և փրկեսցէ զմեզ 'ի ձեռաց թշ_
նամեաց մերոց : * Եւ առաքեաց ժո 4
ղովուրդն 'ի սելով . և առին անտի
զտապանակ ուխտին Տն զօրութեց՝
որ նստի 'ի քերովբէս : և երկոքեան որ
դիքն հեղեայ ընդ տապանակին ուխ_
տին Այ ոփնի և փենեհէս գնացին :
* Եւ եղև իբրև եկն տապանակ ուխ 5
տին Տն 'ի բանակն, աղաղակեաց ամ
իէլ մեծաձայն . և հնչեաց երկիրն :
* Եւ լուան այլազգիքն զբարբառ 6
աղաղակին : և ասեն այլազգիքն զի՞նչ
է բարբառ մեծի աղաղակին այնո_
րիկ 'ի բանակի եբրայեցւոցն : և գի_
տա_

տացին եթէ տապանակն Տն եկն 'ի
բանակն: * Եւ երկեան այլազգիքն՝ 7
և ասեն. այն ԱԾք նոցա եկին 'ի բա-
նակն: ապրեցո զմեզ ՏՐ այսօր: վա՜յ
մեզ: զի ոչ եղև մեզ այսպիսի յերէկ
և յեռանդ: * Վա՜յ մեզ. և ո՛ ապրե- 8
ցուսցէ զմեզ 'ի ձեռաց աստուծոց հզօ-
րացն այսոցիկ: այն ԱԾք են՝ որք հա-
րին զեգիպտոս ամ հարուածովք. և
յամենայն անապատին: * Զօրա- 9
ցարո՛ւք՝ լերո՛ւք արք՝ ո՜ այլազգիք:
գուցէ ծառայիցէք եբրայեցւոցն՝ զոր
օրինակ ծառայեցին ձեզ: լերո՛ւք
արք՝ և պատերազմեցարո՛ւք ընդ նս:
* Եւ պատերազմեցան ընդ նոսա: և 10
փախեաւ այր իէլ. իւրաքանչիւր 'ի
յարկս իւրեանց: և եղեն հարուածք
մեծամեծք յոյժ: և անկան յիսրայէլէ
երեսուն հազար դասուց: * Եւ տա- 11
պանակն ԱՅ առաւ: և երկոքին որ-
դիքն հեղեայ մեռան, ոփնի և փենե-
հէս: * Եւ ընթացաւ այր յամինացի 12
'ի բանակէ անտի. և եկն 'ի սելով յաւ-
ուր յայնմիկ. և ձորձք իւր պատա-
ռեալք՝ և հող զգլխով իւրով: * Եւ 13
եկն՝ և ահա հեղի նստէր աթոռով
իւրով առ դրանն: և դիտէր զճանա-
պարհն. զի էր սիրտ նորա տագնա-
պեալ վասն տապանակին ԱՅ: և
եմուտ այրն գոյժ արկանել 'ի քաղա-
քին: և աղաղակեաց քաղաքն: * Եւ 14
լուաւ հեղի զձայն աղաղակին՝ և ասէ.
զի՞նչ է ձայն աղաղակին այնորիկ: և
այրն փութացաւ մտանել՝ և տալ
գոյժ հեղեայ: * Եւ հեղի էր ամաց 15
իննսուն և ութից: և աչք իւր վատե-
էին՝ և ոչ տեսանէր: ( և ասէ հեղի
ցարսն՝ որք շուրջ կային զնովաւ.
զի՞նչ է բարբառ աղաղակին այնո-
րիկ:)* Եւ այրն փութացեալ եմուտ 16
առ հեղի՝ և ասէ ցնա: ես եմ, որ եկի
'ի բանակէ անտի. և ես եմ, որ փա-
խեայ այսօր 'ի պատերազմէն: և ասէ՝
զի՞նչ գործ գործեցաւ որդեակ. պատ-
մեա՛ ինձ: * Պատասխանի ետ պատա- 17
նին՝ և ասէ: փախեաւ այր իէլ յերե-
սաց այլազգեացն: և հարուածք մե-
ծամեծք եղեն 'ի ժողովրդեանն. և
երկոքին որդիքն քո մեռան ոփնի և
փենեհէս. և տապանակն ԱՅ առաւ:
* Եւ եղև իբրև յիշեաց զտապանակն 18
ԱՅ, անկաւ հեղի յաթոռոյն յետս
առ դրանն. և բեկաւ ողն նորա՝ և մե-
ռաւ. զի այր ծեր էր և ծանրացեալ.
և նա դատեաց զիէլ ամս քառն:
* Եւ նու նր՝ կին փենեհէսի՝ յղի էր 19
մերձ 'ի ծնունդս. իբրև լուաւ բզ-
գոյժն՝ եթէ առաւ տապանակն ԱՅ.

(margin: Փղշտա-ցւոց; Բենիամի-նացի)

և թէ մեռա՛ւ սկեսրայրն նր՝ և այր
իւր. եղաւ՝ և ծնաւ՝ զի պատեցան զնո
20 վաւ երկունք իւր: * Եւ 'ի ժամանա-
կի յորում մեռանէր, ասեն ցնա կա-
նայքն՝ որք շուրջ զնովաւն կային. մի՛
երկնչիր, զի զուստր ծնար. և ոչ ետ
պատասխանի. և ոչ իմացաւ սիրտ նր:
21 * Եւ կոչեցին զմանուկն վայքաբօթ. (margin: Իքաբօդ)
'ի վերայ տապանակին ԱՅ. և 'ի վր
սկեսրէին նր. և 'ի վերայ առն իւրոյ:
22 * Եւ ասեն, բարձեալ են փառք իէի՝
յառնուլ տապանակին Տն. և վն մե-
ռանելոյ սկեսրէին նր՝ և առն իւրոյ:

## Գլ: Ե:

1 Եւ այլազգիքն առին զտապա-
նակն ԱՅ՝ և տարան զնա յաբե-
2 նեզերայ յազովտոս: * Եւ առին այլ-
ազգիքն զտապանակն Տն՝ և տարան
'ի տուն դագոնայ. և կանգնեցին զնա
3 առ դագոնաւն: * Եւ կանխեցին ազով-
տացիքն 'ի վաղիւն անդր՝ և մտին 'ի
տուն դագոնայ՝ և տեսին զդագոն
կործանեալ 'ի վերայ երեսաց իւրոց
'ի գետնի՝ առաջի տապանակին ԱՅ.
և կանգնեցին զդագոն՝ և կացուցին
զնա 'ի տեղւոջ իւրում: ( և ծանրա-
ցաւ ձեռն Տն 'ի վերայ ազովտաց-
ւոցն՝ և չարչարեաց զնս. և եհար զնս
յերաստանս իւրեանց՝ զազովտոս և
4 զսահմանս նորա:) * Եւ եղև իբրև
կանխեցին ընդ առաւօտն 'ի վաղիւն
անդր. և ահա դագոն կործանեալ
կայր 'ի վերայ երեսաց իւրոց յերկիր.
առաջի տապանակի ուխտին Տն. և
գլուխն դագոնայ. և երկոքին թաթք
ոտից նր խորտակեալք՝ և ցրուեալք
ընդ մէջ գետնին. և երկոքին դաս-
տակք ձեռաց նր անկեալք զսեմօքն:
5 * Բայց միայն ողնայարն դագոնայ
մնացեալ էր: վասն այնորիկ ոչ կոխեն
քուրմքն դագոնայ՝ և ամ որ մտանէ
'ի տուն դագոնայ՝ զսեամս տանն դա-
գոնայ յազովտոս՝ մինչև ցայսօր. այլ
6 քայլելով քայլեն՝ և անցանեն: * Եւ
ծանրացաւ ձեռն Տն 'ի վերայ ազով-
տայ. ‖ և էած 'ի վր նոցա հարուածս ‖ (margin: Սաղմ. 77.66.)
յերաստանս. և եռացոյց մկունս յան
դէս նոցա. և եղև շփոթ մեծ մահու 'ի
7 քաղաքին: * Եւ տեսին արք ազով-
տայ՝ թէ այն այնպէս է. ասեն՝ ոչ նստ-
ցի տապանակն ԱՅ առ մեզ. զի ծան-
րացաւ ձեռն նր 'ի վերայ մեր. և 'ի վր
8 դագոնայ աստուծոյն մերոյ: * Եւ ա-
ռաքեցին՝ և ժողովեցին զամ նախա-
րարս այլազգեացն առ ինքեանս. և
ասեն. զի՞նչ արասցուք տապանակին
ԱՅ իէի. և ասեն գեթացիքն. փո-
խեսցի

խեացի տապանակն Ա՟Յ Իղի առ մեզ՝
և փոխեցաւ տապանակն Ա՟Յ ՚ի Գեթ։
* Եւ եղև յետ փոխելոյ նորա անդր. 9
լինէր ձեռն Տ՟Ն ՚ի վերայ քաղաքին և
խռովութիւն մեծ յոյժ. և չարչարեաց
զարս քաղաքին ՚ի փոքուէ մինչև ՚ի
մեծամեծս՝ և էհար զն՟ս յերաստանս
իւրեանց. և արարին գեթացիքն իւր
եանց երաստանս ։ * Եւ առաքեցին 10
զտապանակն ա՟յ յասկաղօն. և եղև
՚ի մտանել տապանակին ա՟յ յասկա-
ղօն. գոռոզք բարձին ասկաղոնացիքն՝
և ասեն. ընդէ՞ր դարձուցիք զտա-
պանակն Ա՟Յ Իղի առ մեզ. սպանա-
նել զմեզ՝ և զժողովուրդս մեր։ * Եւ 11
առաքեցին՝ և ժողովեցին զա՟մ նախա
րարս այլազգեացն. և ասեն։ առա-
քեցէք զտապանակն Ա՟Յ Իղի՝ և նստ
ցի ՚ի տեղւոջ իւրում. և մի՛ սպանես
ցէ զմեզ՝ և զժողովուրդս մեր. զի
էհաս շշուկ մահու յամենայն քաղա-
քիս ծանրացեալ յոյժ. յորմէ հետէ
եմուտ տապանակն Ա՟Յ Իղի անդր։
* Եւ կենդանիքն, որք ոչ էին մե- 12
ռեալ՝ հարան յերաստանս իւրեանց.
և ել աղաղակ քաղաքին յերկինս։

## ԳԼ: Զ:

Եւ էր տապանակն Տ՟Ն յանդաս- 1
տանին այլազգեաց զեօթն ա-
միս. և եռացոյց յերկիր նոցա զմուկն։
* Եւ կոչեցին այլազգիքն զքուրմսն՝ 2
և զհղձան և զգէտս իւրեանց՝ և ա-
սեն. զի՞նչ արասցուք տապանակին
Տ՟Ն. ցուցէք մեզ. իւ՞ առաքեսցուք
զնա ՚ի տեղի իւր. և ասեն ։ * Եթէ 3
առաքիցէք զտապանակն ա՟յ Իղի ուխ
տին Տ՟Ն՝ մի՛ առաքիցէք զնա ունայն.
այլ տալով տաջիք նմա զհարուածոյն.
և ապա բժշկիջիք՝ և հաշտեսցի ընդ
ձեզ. գուցէ ոչ վերանայցէ ձեռն ն՟ր
՚ի ձէնջ ։ * Եւ ասեն. զի՞նչ տայցեմք 4
ընդ գանին նորա ։ և ասեն՝ ըստ թուո՛
ոյ նախարարացն այլազգեաց. հինգ
երաստանս ոսկիս արարէք. և հինգ
մուկն ոսկի. զի հարուածք են ՚ի ձեզ.
և յիշխանս ձեր և ՚ի ժողովրդեանդ ։
* Եւ արդ՝ արարէք զպատկերս երաս 5
տանաց ձերոց. և զնմանութիւն մկանց
ձերոց զապականչաց երկրին. և տաջիք
Տ՟Ն զփառս՝ զի թեթևացուսցէ զձ
ձեռն իւր ՚ի ձէնջ, և ՚ի դից ձերոց. և
յերկրէ ձերմէ ։ * Եւ ընդէ՞ր ծանրա 6
‖ Ղուկ. ցուցանէք զսիրտս ձեր. ‖ որպէս ծան
12.31. րացոյց եգիպտոս և փարաւոն զսիրտս
իւրեանց. ո՛չ ապաքէն յորժամ խա-
ղաց նոքօք՝ ապա արձակեցին զն՟ս՝ և
գնացին ։ * Եւ արդ՝ առէք և արարէք 7
սայլ մի նոր. և երկուս երինջս անդ-
րանկածինս առանց որդւոց. և լծէ-
ցէք զերինջսն ՚ի սայլին. և քեցեցէք
զորդիսն ՚ի հետոց նոցա ՚ի տուն ։
8 * Եւ առէք զտապանակն Տ՟Ն. և դիք
զնա ՚ի վ՟ր սայլին. և զանօթսն զոս-
կիս՝ զորս տայցէք նմա ընդ գանին. և
դիջիք ՚ի քուրձ արգոբ ՚ի կողմանէ
ն՟ր. և առաքեսջիք զնա՝ և վարեսջիք
9 զնա՝ և երթիցէ ։ * Եւ տեսջիք՝ եթէ
՚ի մուտս սահմանաց իւրոց երթիցէ
ընդ բեթսամիւս, նա արար մեզ զչա
րիս մեծամեծս զայսոսիկ. ապա թէ
ոչ, գիտասցուք թէ ո՛չ ձեռն ն՟ր եհն
՚ի վերայ մեր. այլ վրիպակ ինչ գոր
10 ծեցաւ ՚ի մեզ ։ * Եւ արարին այլազ
գիքն այնպէս. և առին երկուս երինջս
անդրանկածինս՝ և լծեցին զնոսա ՚ի
սայլին. և զորդիս ն՟ց արգելին ՚ի տան։
11 * Եւ եդին զտապանակն Տ՟Ն ՚ի սայ-
լին. և զքուրձն արգոբ. և զմկունսն
ոսկիս։ և զպատկերս երաստանաց իւր
12 եանց ։ * Եւ ուղղեցան երինջքն ընդ
ճանապարհ մտիցն բեթսամիւսայ. ՚ի
մի շաւիղ երթային՝ և վառակէին.
և ո՛չ խոտորէին. ո՛չ յաջ՝ և ո՛չ յահեակ։
և նախարարք այլազգեացն երթային
զհետ ն՟ր մինչև ՚ի սահմանս բեթսա-
13 միւսայ։ * Եւ որք ՚ի բեթսամիւսն էին՝
հնձէին հունձս ցորենոյ ՚ի հովիտսն.
և ամբարձին զաչս իւրեանց՝ և տեսին
զտապանակն Ա՟Յ՝ և ուրախ եղեն ՚ի
14 առաջ նորա ։ * Եւ սայլն եմուտ յան
դաստանն ովսեայ բեթսամիւսացւոյ.
և կանգնեցին անդ առ նովաւ զվէմ
մի մեծ. և պատառեցին զփայտ սայ-
լին. և զերինջսն հանին յողջակէզս
15 Տ՟Ն ։ * Եւ ղևտացիքն հանին զտա-
պանակն Տ՟Ն. և զքուրձն արգոբ ընդ
նմին. և զանօթսն ոսկիս որք ՚ի նմա.
և եդին ՚ի վերայ վիմի մեծի. և արք
բեթսամիւսայ մատուցին ողջակէզս.
և զոհեցին զոհս յաւուր յայնմիկ Տ՟Ն։
16 * Եւ հինգ նախարարքն այլազգեաց
տեսանէին. և դարձան յասկաղոն ։
17 * Եւ երաստանքն ոսկիք՝ զորս ետուն
այլազգիքն Տ՟Ն ընդ գանին, մին ազով
տայ էր. և մին գազայ. և մին ասկա-
ղոնի. և մին գեթայ. և մին ակկարո-
18 նի ։ * Եւ մկունքն ոսկիք ըստ թուո՛յ
ա՟մ քաղաքացն այլազգեաց. հնգե-
ցունց նախարարացն. յամուր քաղա-
քաց մինչև ցաւանս փերեզացւոյն.
մինչև ցվէմն յորոյ վ՟ր եդին զտապա
նակ ուխտին Տ՟Ն. մինչև ցայսօր յան
դին ովսեայ բեթսամիւսացւոյ ։ ( և
ո՛չ հաճեցան որդիքն յեքոնեայ ընդ
արս բեթսամիւսացւոցն՝ զի տեսին

զտա-

զտապանակն Տն։) * Եւ եհար 'ի նոցանէն յիսուն հազար և եօթանասուն արս. և սուգ էառ ժողովուրդն՝ զի եհար Տր 'ի ժողովրդեանն հարուածս մեծամեծս յոյժ։ 20 * Եւ ասեն արք բեթսամիւսացիք. ո՞ կարասցէ շրջիլ առաջի Տն Այ՝ սրբոյս այսորիկ. և առ ո՞ ելանիցէ տապանակն Տն 'ի մէնջ։ 21 * Եւ առաքեցին հրեշտակս առ բնակիչս կարիաթարիմայ՝ և ասեն. դարձուցին այլազգիքն զտապանակն Տն. իջէք՝ և հանէք զնա առ ձեզ։

## ԳԼ: Է:

1 Եւ եկին արք կարիաթարիմայ. և հանին անտի զտապանակ ուխտին Տն. և տարան զնա 'ի տուն ամինադաբայ որ 'ի բլրին. և զեղիազար զորդի նր սրբեցին պահել զտապանակ ուխտին Տն։ 2 * Եւ եղև՝ յօրէ յոր մէհետէ էր տապանակն 'ի կարիաթարիմ. բազմացան աւուրքն՝ և եղեն ամք քսան. և հայեցան ամ տունն Իղի զկնի Տն։ 3 * Եւ խօսեցաւ սամուէլ ընդ ամ տանն Իղի՝ և ասէ. ‖ Թէ յամենայն սրտէ ձերմէ դարձեալ էք առ Տէր՝ 'ի բաց արարէք զաստուածսն օտարոտիս 'ի միջոյ ձերմէ. և զանտառսն. և պատրաստեցէք զսիրտս ձեր առ Տր. և ծառայեցէք նմա միայնոյ. և փրկեսցէ զձեզ 'ի ձեռաց այլազգեացն։ 4 * Եւ 'ի բաց արարին որդիքն Իղի զբահաղիմն. և զանտառսն աստարովթայ. և ծառայեցին նմա միայնոյ։ 5 * Եւ ասէ սամուէլ. ժողովեցէք զամենայն Իէլ 'ի մասեփաթ. և կացից յաղօթս վն ձեր առ Տր։ 6 * Եւ ժողովեցան 'ի մասեփաթ. և հանին ջուր՝ և եհեղ յերկիր առաջի Տն. և պահեցին յաւուրն յայնմիկ՝ և ասեն՝ մեղաք առաջի Տն. և դատեցաւ սամուէլ զորդիսն Իղի 'ի մասեփաթ։ 7 * Եւ լուան այլազգիքն, եթէ ժողովեցան որդիքն Իղի 'ի մասեփաթ. և ելին նախարարք այլազգեացն 'ի վերայ Իղի։ և լուան որդիքն Իղի՝ և երկեան յերեսաց այլազգեացն։ 8 * Եւ ասեն որդիքն Իղի ցսամուէլ. մի դադարեր 'ի գոչելոյ վասն մեր առ ՏրԱծ քո. և փրկեսցէ զմեզ 'ի ձեռաց այլազգեացն։ 9 * Եւ էառ սամուէլ զգառն մի դիեցիկ. և եհան զնա ողջակէզ Տն հանդերձ ամենայն ժողովրդեամբն. և գոչեաց սամուէլ առ Տր վասն Իղի. և լուաւ նմա Տր։ 10 * Եւ մինչդեռ մատուցանէր սամուէլ զողջակէզն. մերձեցան այլազգիքն 'ի պատերազմ 'ի վր Իղի. ‖ և որոտաց Տր մեծաւ բարբառով յաւուր յայնմիկ 'ի վր այլազգեացն. և շփոթեցան՝ և անկան առաջի իսրայէլի 'ի մասեփաթ։ 11 * ‖ Եւ արք Իղի հալածեցին զայլազգիսն. և հարին զնոսա մինչև 'ի ներքոյ բեթքովրայ։ 12 * Եւ էառ սամուէլ զվէմ մի, և կանգնեաց 'ի մէջ մասեփայ և 'ի մէջ փաղեայ. և կոչեաց զանուն նր աբենեզեր՝ վէմ օգնականի։ և ասէ՝ մինչև ցայս վայր օգնեաց մեզ Տր։ 13 * Եւ կորացոյց Տր զայլազգիսն. և ոչ ևս յաւելին ելանել 'ի վերայ սահմանացն իսրայէլի՝ և եղև ձեռն Տն 'ի վր այլազգեացն զամ աւուրս սամուէլի։ 14 * Եւ դարձուցին զքաղաքսն՝ զորս առին այլազգիքն յորդւոցն Իղի. և ետուն զնոսա անդրէն Իղի. յասկաղոնէ մինչև ցգէթ. և զսահմանս իսրայէլի հանին 'ի ձեռաց այլազգեացն. և էր խաղաղութի 'ի մէջ Իղի և 'ի մէջ ամօրհացւոցն։ 15 * Եւ դատեաց սամուէլ 16 զԻէլ զամ աւուրս կենաց իւրոց։ * Եւ երթայր ամ յամէ. և պատէր զբեթէլ. և զգաղգաղ. և զմասեփաթ. և դատէր զԻէլ յամենայն սրբեալսն յայնոսիկ։ 17 * Եւ դարձ իւր էր յարիմաթեմ. զի անդ էր տուն նորա. և անդ դատէր զԻէլ. և շինեաց անդ զսեղան Տն։

## ԳԼ: Ը:

1 Եւ եղև իբրև ծերացաւ սամուէլ կացոյց զորդիս իւր դատաւորս իսրայէլի։ 2 * Եւ այս անուանք են որդւոց նր. անդրանկանն յովէլ. և անուն երկրորդին աբիա. դատաւորք 'ի բերսաբէէ։ 3 * Եւ ոչ գնացին որդիքն նր զճանապարհս նր. և թիւրեցան զհետ զօշաքաղութե. առնուին կաշառս՝ և թիւրէին զիրաւունս։ 4 * Եւ ժողովեցան արք Իղի՝ և եկին առ սամուէլ յարիմաթեմ։ 5 * Եւ ասեն ցնա՝ դու աւադիկ ծերացար. և որդիքն քո ոչ գնան զճանապարհս քո. ‖ և արդ՝ կացո՛ 'ի վր մեր թագաւոր դատել զմեզ որպ և այլ ազգք։ 6 * Եւ չար թուեցաւ բանն յաչս սամուէլի. զի ասացին թէ տուր մեզ թագաւոր դատել զմեզ։ և յաղօթս եկաց սամուէլ առ Տր։ 7 * Եւ ասէ Տր ցսամուէլ. լո՛ւր ձայնի ժողովրդեանդ, որպէս և խօսեցան ընդ քեզ. զի ոչ եթէ զքեզ անարգեցին, այլ զիս մերժեցին չթագաւորել 'ի վր նոցա։ 8 * Ըստ ամենայն գործոց զորս արարին ընդ իս՝ յօրէ յորմէ հանի զնս յեգիպտոսէ մինչև ցայսօր. և թողին զիս՝ և ծառայեցին աստուածոց օտարաց՝

Margin notes: ‖ 2. Օրէ. 6.13. Մատ. 4.10. — ‖ Սիրաք. 46. 20. — Եւ ելին 'ի Մասեփաթայ. — ‖ Սիրաք. 46.21. — ‖ Ովսէ 13.10. Գործ. 13.21.

բաց՝ նոյնպէս առնեն նոքա. և ընդ
քեզ: *Եւ արդ՝ լուր ձայնի նոցա . 9
բայց դնելով վկայես զվկայութիւն նց .
և պատմեսցես նոցա զիրաւունս թա
գաւորին՝ որ թագաւորեսցէ նց: *Եւ 10
խօսեցաւ սամուէլ զամ պատգամս
Տն առ ժողովրդեանն՝ որք խնդրե
ցին 'ի նմանէ թագաւոր: *Եւ ասէ 11
այս ինչ լիցին իրաւունք թագաւորին՝
որ թագաւորեսցէ 'ի վերայ ձեր. զուս
տերս ձեր առցէ՝ և արասցէ կառա
վարս՝ և հեծեալս՝ և սուրհանդակս՝
առաջի կառաց իւրոց: *Եւ կացուս 12
ցէ զնս իւր հազարապետս. և հարիւ
րապետս. և հնձել զհունձս նորա՝ և
կթել զկութս նորա. և առնել նմա
զէնս՝ և անօթս կառաց: *Եւ զդս 13
տերս ձեր առցէ յիւղագործս՝ և 'ի
խորտկարարս և 'ի հացեփեացս:
*Եւ զանդս ձեր. և զայգիս ձեր . և 14
զձիթենիս ձեր զազնիւս առցէ. և տա
ցէ ստրկաց իւրոց: *Եւ զսերմանս 15
ձեր՝ և զայգիս ձեր տասանորդեսցէ՝
և տացէ ներքինեաց իւրոց՝ և ստրկաց
իւրոց: *Եւ զծառայս ձեր՝ և զաղախ 16
նայս ձեր՝ և զանդեայս ձեր զազնիւս.
և զէշս ձեր առցէ, և տասանորդեսցէ
'ի գործ իւր: *Եւ զհօտս ձեր տասա 17
նորդեսցէ. և դուք եղիջիք նմա ծա
ռայք: *Եւ աղաղակեսջիք յաւուր 18
յայնմիկ յերեսաց թագաւորին ձե
րոյ՝ զոր ընտրեցիք ձեզ. և ոչ լուիցէ
ձեզ Տր յաւուրսն յայնոսիկ. զի դուք
ձեզէն ընտրեցիք ձեզ թագաւոր:
*Եւ ոչ կամեցաւ ժողովուրդն լսել 19
սամուէլի. և ասեն ցնա՝ ոչ այդպէս է.
այլ թագաւորեսցէ 'ի վերայ մեր:
*Եւ եղիցուք՝ և մեք իբրև զայլ 20
ազգս. և դատեսցէ զմեզ թագաւորն
մեր. և ելցէ առաջի մեր՝ և պատերազ
մեսցի զպատերազմս մեր: *Եւ լուաւ 21
սամուէլ զամ բանս ժողովրդեանն.
և խօսեցաւ զնոսա յականջս Տն:
*Եւ ասէ Տր ցսամուէլ. լուր ձայնի 22
նոցա՝ և թագաւորեցո նց թագաւոր.
և ասէ սամուէլ ցարս իՂի՝ երթիցէ
իւրաքանչիւրոք 'ի քաղաք իւր:

## ԳԼ. Թ.

ԵՒ էր այր մի յորդւոցն բենիամի 1
նի՝ և անուն նորա կիս՝ որդի ա
բիելի. որդւոյ սաբեդայ. որդւոյ բե
քովրաթայ. որդւոյ աֆիայ. որդւոյ
առն յեմինացւոյ. այր զօրաւոր: *Եւ 2
էր նր որդի. և անուն նորա սաւուղ
այր բարի և անձնեայ. և ոչ գոյր յոր
դիսն իսրայէլի այր լաւ քան զնա՝ ու
սովք չափ 'ի վեր բարձր էր քան զամ

3 երկիրն: *Եւ կորեան էշք հօրն սաւ
ուղայ. ասէ կիս ցսաւուղ՝ ցորդի իւր.
առ ը. քեզ մի 'ի մանկանցդ. և արիք՝
երթայք և խնդրեցէք զէշսն. և գնա
ցին, և անցին ընդ լեառն եփրեմի:
4 *Եւ անցին ընդ լեառն սարիսայ. և
ոչ գտին. և անցին ընդ երկիրն սաղի
մայ՝ և ոչ ուրեք էին. և անցին ընդ
երկիրն յեմինացւոյն՝ և ոչ գտին:
5 *Եւ իբրև եկին 'ի սիփ. ասէ սաւուղ
ցպատանեակն իւր՝ որ ընդ նմա. եկ՝
դարձցուք անդրէն. գուցէ թողեալ
հօր մերոյ զէշսն, և զմէնջ հոգասցէ:
6 *Եւ ասէ ցնա պատանին. ահա այր
Այ է 'ի քաղաքիս յայսմիկ. այր փա
ռաւոր. և զամ ինչ՝ զոր խօսիցի՝ լինե
լով լինի. և արդ՝ երթիցուք անդր.
զի պատմեսցէ մեզ զճանապարհս մեր՝
7 և գնասցուք: *Եւ ասէ սաւուղ
ցպատանին՝ որ ընդ նմա. ահա եր
թայցեմք. և զի՞նչ տանիցիմք առն
Այ. զի հաց ես պակասեցաւ յամա
նոց մերոց. և չիք ինչ՝ որ կայցէ ընդ
8 մեզ աւելի՝ տանել առն Այ: *Եւ
յաւել պատանին տալ պատասխանի
սաւուղայ՝ և ասէ. ահա գտանի 'ի ձե
ռին իմում չորրորդ մասն սկեղ ար
ծաթոյ. և տացես առն Այ. և պատ
9 մեսցէ մեզ զճանապարհս մեր: *(Եւ
յառաջ 'ի մէջ իՂի այսպէս ասէր իւրա
քանչիւրոք՝ յորժամ երթայր հար
ցանել զԱծ: եկայք՝ երթիցուք առ
տեսանողն. զի զմարգարէ՝ յառաջ
10 տեսանող կոչէր ժողովուրդն:) *Եւ
ասէ սաւուղ ցպատանին իւր. բարւոք
է բանդ. և եկ՝ և երթիցուք. և չոգան
11 'ի քաղաքն՝ ուր էր այրն Այ: *Եւ
մինչդեռ ելանէին ընդ զառ 'ի վեր
քաղաքին, գտին նոքա աղջկունս՝ որք
ելանէին հանել զջուր. և ասեն ցնս.
12 իցէ՞ գուցէ աստ տեսանող: *Պա
տասխանի ետուն նոցա աղջկունքն՝ և
ասեն. գո՛յ՝ ահաւադիկ առաջի ձեր
այրդ. արդ՝ արագեցէ՛ք՝ զի վասն աւուրս
եկեալ է 'ի քաղաքս. զի զոհ է այսօր
13 ժողովրդեանն 'ի բամին: *Յորժամ 'ի բար-
մտանիցէք 'ի քաղաքդ՝ ապա գտանի
ցէք զնա 'ի քաղաքիդ. մինչչև երթեալ
իցէ նորա 'ի բամին ուտել. քանզի ոչ
ուտէ ժողովուրդն մինչև 'ի մտանել
նորա. զի նա օրհնէ զզոհն. և ապա
ուտեն կոչնականն հիւրքն. և արդ ե
լէ՛ք՝ զի վասն աւուրս գտանէք զնա
14 այդր: *Եւ ելին 'ի քաղաքն. և իբրև
մտին նոքա 'ի քաղաքամէջն, և ահա
սամուէլ ել ընդառաջ նոցա երթալ
15 'ի բամին: *‖ Եւ էր Տն յայտնեալ ‖Գործ.
յունկն սամուէլի աւուրբ միով յա 13. 21.
ռաջ

ուաջ քան զգալն սաւուղայ առ նա ։ 16 *Եթէ վաղիւ 'ի սոյն ժամու առաքեցից առ քեզ այր յերկրէն Բենիամինի. և օծցես զնա իշխան 'ի վերայ ժողովրդեան իմոյ Իէլի. և փրկեսցէ զժողովուրդ իմ 'ի ձեռաց այլազգեացն. զի հայեցայ 'ի տառապանս ժողովրդեան իմոյ. քանզի եհաս գոչումն նոցա առ իս ։ 17 *Եւ սամուէլ ետես զսաւուղ. և Տր ասէ ցնա՝ ահաւասիկ է այրն՝ զորմէ ասացի քեզ՝ եթէ նա իշխեսցէ ժողովրդեան իմում։ 18 *Եւ մատեաւ սաւուղ առ սամուէլ 'ի մէջ քաղաքին՝ և ասէ. պատմեա ինձ՝ ո՞ր տուն իցէ տեսանողին։ 19 *Պատասխանի ետ սամուէլ՝ և ասէ ցսաւուղ. ես ինքնին իսկ եմ. ել առաջի իմ 'ի բամայ. և կերիցես ընդ իս այսօր. և արձակեցից զքեզ վաղիւ. և զամ ինչ՝ որ 'ի սրտի քում է՝ պատմեցից քեզ։ 20 *Եւ վասն իշոցն երեքօրէից կորուսելոց մի ինչ ածեր զմտաւ՝ քանզի գտեալ են. և ո՞յր իցեն վայելչութիւնք իսրայէլի՝ եթէ ո՛չ քո՝ և զամ տան հօր քոյ։ 21 *Պատասխանի ետ սաւուղ՝ և ասէ ։ ո՛չ ապաքէն առն միոյ յամենայւոյ եմ ես՝ փոքու գաւազանի ցեղին իսրայէլի. և կրտսերոյ ցեղի յամ իշխանութենէ Բենիամինի. և ընդէ՞ր խօսեցար ընդ իս ըստ բանիդ ըստ այդմիկ։ 22 *Եւ էառ սամուէլ զսաւուղ՝ և զպատանին նորա՝ և տարաւ զնոսա 'ի վանս իւր. և ետ նոցա տեղի 'ի վերոյ կոչնականացն իբրև զերեսուն արամբ։ 23 *Եւ ասէ սամուէլ ցխոհակերին. տուր ինձ զբաժին՝ զոր ետու ցքեզ. զորմէ ասացի դնել զնա առ քեզ ։ 24 *Եւ եփեաց խոհակերն զազդրն՝ և զթամբն որ զնովաւ. և եդ զայն առաջի սաւուղայ. և ասէ սամուէլ ցսաւուղ. ահաւասիկ նշխար. դի՛ր զայդ առաջի քո՝ և կե՛ր. զի վկայութիւն լիցի քեզ առ 'ի ժողովրդոց. և կրծեսցես ։ և եկեր սաւուղ ընդ սամուէլի յաւուր յայնմիկ ։ 25 *Եւ էջ 'ի բամայ 'ի քաղաքն. և արկին անկողինս սաւուղայ 'ի տանիսն՝ և ննջեաց։ 26 *Եւ եղև ընդ ելանել առաւօտուն՝ կոչեաց սամուէլ զսաւուղ 'ի տանեացն՝ և ասէ. արի՛ էկ՝ և արձակեցից զքեզ. և յարեաւ սաւուղ՝ և ել ինքն և սամուէլ արտաքս ։ 27 *Եւ մինչդեռ իջանէին նոքա յեզր քաղաքին. ասէ սամուէլ ցսաւուղ՝ ասա՛ ցպատանիդ՝ և անցցէ յառաջ քան զմեզ՝ և էանց. և դու կացցես այսօր աստ՝ և լուիցես զպատգամս Տն ։

(խոհարար)

## Գլ: Ժ.

1 Եւ || էառ սամուէլ զսրուակն իւղոյ՝ և եհեղ 'ի գլուխ նորա. և համբուրեաց զնա. և ասէ ցնա՝ ո՛չ ապաքէն էօծ զքեզ Տր 'ի վերայ ժառանգութեան իւրոյ իշխան. և 'ի վերայ ժողովրդեան իւրոյ Իէլի. և դու իշխեսցես ժողովրդեան Տն. և փրկեսցես զնա 'ի ձեռաց թշնամեաց իւրոց շուրջանակի՝ և այս եղիցի քեզ նշանակ՝ եթէ Տր էօծ զքեզ։ 2 *Իբրև երթայցես այսօր յինէն՝ գտցես երկուս արս առ գերեզմանաւն հռաքելի՝ 'ի լերինն Բենիամինի. զի մեծամեծս վազիցեն. և ասիցեն ցքեզ. գտան էշքն՝ յորոց դուն 'ի խնդիր երթեալ էիր. և թողեալ հօր քոյ զիրս իշոցն հոգայ վասն ձեր. և ասէ՝ զի՞նչ արարից վա որդւոյ իմոյ ։ 3 *Եւ երթիցես անտի ևս անդր. և հասցես մինչև 'ի կաղնին դեբօրայ. և գտցես անդ արս երիս՝ որք ելանիցեն առ Ած 'ի բեթէլ. միոյն բարձեալ ուլս երիս. և միոյն բարձեալ երիս ամանս հացի. և միոյն բարձեալ տիկ մի գինւոյ։ 4 *Եւ հարցցեն զքէն 'ի խաղաղութիւն. և տայցեն քեզ երկուս պտուղս հացի. և առցես 'ի ձեռաց նոցա ։ 5 *Եւ ապա մտցես 'ի բլուրն ԱՅ՝ ուր է գունդ այլազգեացն. և եղիցի յորժամ մտանիցես 'ի քաղաքն. դիպեսցիս պարու մարգարէից իջելոց 'ի բամայ. և առաջի նց սրինգ՝ և թմբուկ. և փող. և քնար. և ինքեանք մարգարէացեալք։ 6 *Եւ խաղասցի 'ի վերայ քո հոգի Տն. մարգարէասցիս և դու ընդ նոսա. և դարձցիս յայր այլ։ 7 *Եւ եղիցի յորժամ գայցեն նշանքս այսոքիկ 'ի վերայ քո՝ արասցես զամ ինչ՝ զոր գտանիցէ ձեռն քո՝ զի Ած ընդ քեզ է։ 8 *Եւ իջցես յառաջ քան զիս 'ի գաղգաղայ. և ահա ես իջից առ քեզ մատուցանել ողջակէզս՝ և զոհս՝ և խաղաղականս. զեօթն օր դադարեսցես մինչև եկից առ քեզ. և ցուցից քեզ՝ զոր ինչ առնիցես ։ 9 *Եւ եղև 'ի դարձուցանել զթիկունս իւր գնալոյ 'ի սամուէլէ. շրջեաց նմա Ած զսիրտ այլ. և եկին հասին նմա ամ նշանքն յաւուր յայնմիկ։ 10 *Եւ եկն անտի 'ի բլուրն՝ և ահա պար մարգարէից ընդ առաջ նորա. և խաղաց 'ի վերայ նորա հոգի ԱՅ. և մարգարէացաւ 'ի միջի նոցա ։ 11 *Եւ եղև իբրև ծանեան զնա ամենեքին՝ որոց յերէկն և յեռանդ տեսեալ էր զնա. եթէ ահա և նա 'ի մէջ մարգարէիցն մարգարէանայր, ասէ

|| Գործ. 13. 21.

Թաբօր

ժողովուրդն իւրաքանչիւր ցընկեր
իւր․ զի՞նչ է այդ՝ որ եղև որդւոյ Կի-
սեայ․ կամ թէ՝ և սաւո՞ւղ ընդ մար
գարէս իցէ։ * Եւ պատասխանի ետ 12
ոմն 'ի նոցանէ և ասէ․ և ո՞վ է հայր
նորա, եթէ ոչ կիս․ վասն այնորիկ
‖ Վ այր․ 19. 24. եղև յառակս․ ‖ թէ և սաւուղ 'ի մար
գարէս։ * Եւ վախճանեաց զմարգա 13
րէանալն․ և եկն 'ի բլուրն։ * Եւ ասէ 14
հօրեղբայր նորա ցնա և ցծառայ նր․
յո՞ շրջայք․ և ասեն՝ խնդրել զէշսն․
և իբրև տեսաք թէ չեն ուրեք՝ մտաք
առ սամուէլ։ * Եւ ասէ ընտանին 15
ցսաւուղ՝ պատմեա ինձ՝ զի՞նչ ասաց
քեզ սամուէլ։ * Եւ ասէ սաւուղ ցըն 16
տանին իւր․ պատմելով պատմեաց
ինձ՝ եթէ գտան էշքն։ բայց զբանն
թագաւորութեան ոչ եհան նմա 'ի վեր՝
զոր ասաց նմա սամուէլ։ * Եւ ժողո 17
վեաց սամուէլ զամ ժողովուրդն առ
Տր 'ի մասեփաթ։ * Եւ ասէ ցորդիսն 18
իսրայէլի՝ այսպէս խօսեցաւ Տր Ած
իսրայէլի։ և ասէ՝ ես եմ, որ հանի զոր
դիսն իսրայէլի յեգիպտոսէ․ և փրկե
ցի զձեզ 'ի ձեռաց փարաւոնի՝ արքայ
ին եգիպտացւոց․ և յամ թագաւո
րութեանց նեղչաց ձերոց։ * Եւ դուք 19
այսօր անարգեցիք զԱծ․ որ է փրկիչ
ձեր յամենեցունց․ որք շուրջ զձեօք
‖ Ս էր․ 8.19. են՝ և նեղեն զձեզ․ և ասացիք՝ ‖ ոչ
այդպէս, այլ զի կացուցես 'ի վերայ
մեր թագաւոր․ և արդ կացէք առա
ջի Տն ըստ իշխանութեանց ձերոց՝ և ըստ
գաւազանաց ձերոց․ և ըստ հազարաւ
որաց ձերոց։ * Եւ մատոյց սամուէլ 20
զամ գաւազանսն իսրայէլի․ և ել վի
ճակն գաւազանին բենիամինի։ * Եւ 21
մատոյց զգաւազանն բենիամինի ըստ
ցեղից․ և ելանէր վիճակն ցեղին ա-
մատտարեայ․ և մատուցին զցեղն ա-
մատտարեայ ըստ արանց․ և ելանէր
վիճակն սաւուղայ որդւոյ կիսեայ․ և
խնդրէր զնա՝ և ոչ գտանէր։ * Եւ 22
եհարց միւսանգամ սամուէլ զՏէր՝
եթէ գայցէ այր այրն։ և ասէ Տէր՝
ահադիկ թաքուցեալ է ընդ կարա-
սեաւ։ * Եւ ընթացաւ՝ և էառ զնա 23
անտի․ և կացոյց զնա 'ի մէջ ժողովր
դեանն․ և բարձրացաւ քան զամ ժո
ղովուրդն թիկամբք չափ 'ի վեր։
* Եւ ասէ սամուէլ ցամենայն ժողո 24
վուրդն․ եթէ տեսանիցէք՝ զոր ընտ
րեաց իւր Տր․ զի ոչ գոյ նման դորա
յամենեսին 'ի ձեզ․ և ծանեան ամ
ժողովուրդն՝ և ասեն՝ կեցցէ արքայ։
* ‖ Եւ ասաց սամուէլ ժողովրդեանն 25
զիրաւունս թագաւորին․ և գրեաց 'ի
մատենի․ և եդ առաջի Տն և արձա-
կեաց սամուէլ զամ ժողովուրդն․ և
գնաց իւրաքանչիւրոք 'ի տեղի իւր։
26 * Եւ սաւուղ գնաց 'ի տուն իւր 'ի
գաբաայ․ և գնացին որդիք զօրութե
զորոց դրդուեաց Տր զսիրտս նց ընդ
27 սաւուղայ։ * Եւ որդիքն ժանտք ասէ
ին՝ թէ ո՞ է սա․ որ փրկիցէ զմեզ․ և
անարգեցին զնա՝ և ոչ բերին նմա
պատարագս․ իսկ նա էր իբրև խուլ։

## ԳԼ․ ԺԱ։

1 Եւ եղև յետ ամսոյ միոյ աւուրց․
ել նաաս ամմոնացի՝ և բանակե
ցաւ զյաբիսաւ գաղաադու։ և ասեն
ամ արք յաբիսայ ցնաաս ամմոնացի․
ուխտեա ընդ մեզ ուխտ՝ և ծառայես
2 ցուք քեզ։ * Եւ ասէ ցնոսա նաաս
ամմոնացի․ այնու ուխտեցից ընդ ձեզ
ուխտ․ եթէ հանիցէք զամ ակն ձեր
զաջոյ․ և եդից նախատինս 'ի վր ամ
3 իսրայէլի։ * Եւ ասեն արք յաբիսայ
ցնա․ թո՛յլ տուր մեզ աւուրս եօթն․
և առաքեսցուք հրեշտակս յամ սահ-
մանս իսրայէլի․ եթէ չիցէ ոք՝ որ փր
4 կիցէ զմեզ՝ ելցուք առ քեզ։ * Եւ
եկին հրեշտակք 'ի գաբաայ առ սաւ
ուղ․ և խօսեցան զբանսն յականջս ժո
ղովրդեանն․ և ամբարձին ժողովրդն
5 զձայնս իւրեանց՝ և լացին։ * Եւ ահա
սաւուղ գայր ընդ առաւօտն յանդոյ
և ասէ սաւուղ․ զի՞նչ իցէ՝ զի լայ ժո
ղովուրդն։ և պատմեցին նմա զպատ-
6 գամս որդւոցն յաբիսայ։ * Եւ խա-
ղաց Հոգի Տն 'ի վր սաւուղայ՝ իբրև
լուաւ զբանսն զայնոսիկ․ և սրտմտե-
7 ցաւ բարկութի նորա յոյժ։ * Եւ
էառ երկուս եզինս՝ և յօշեաց զնոսա․
և առաքեաց յամ սահմանս իսրայէլի
'ի ձեռն հրեշտակաց՝ և ասէ․ որ ոք ոչ
ելանիցէ զհետ սաւուղայ՝ և զհետ սա
մուէլի․ ըստ այդմ օրինակի արասցեն
զեզինս նորա։ և անկաւ ահ Տն 'ի վր
ամ ժողովրդեանն իսրայէլի․ և խրա
8 խուսեցին իբրև զմի այր։ * Եւ համ-
րես արար նոցա 'ի բեզեկ։ ամ այր
իսրայելացի ելին վեցհարիւր հազար․
և այր յուդայ եօթանասուն հազար։
9 * Եւ ասէ ցհրեշտակսն եկեալս․ այս-
պէս ասասջիք ցարս յաբիսայ գաղաա
դու։ վաղիւ եղիցի ձեզ փրկութի ընդ
ջեռուցանել արեգականն։ և եկին
հրեշտակքն 'ի քաղաքն․ և պատմեցին
արանցն յաբիսայ՝ և ուրախ եղեն։
10 * Եւ ասեն արք յաբիսայ ցնաաս ամ
մոնացի․ վաղիւ ելցուք մեք առ ձեզ․ և
արասջիք ընդ մեզ՝ որ ինչ հաճոյ իցէ
11 առաջի ձեր։ * Եւ եղև 'ի վաղիւ
անդր․ և բաժանեաց սաւուղ զժողո-
վուրդն

վուրդն յերիս առաջս. և մտին 'ի մէջ բանակին յառաւօտու պահուն. և հարկանէին զորդիսն ամմոնայ մինչև 'ի ջեռնուլ աւուրն. և եղեն մնացեալքն և ոչ մնացին 'ի նոցանէ երկու 'ի միասին: 12 *Եւ ասէ ժողովուրդն ցսամուէլ. ‖ով է՞ որ ասացն՝ թէ մի՛ թագաւորեսցէ մեզ սաւուղ. տուր 'ի ձեռս զարսն՝ և սպանցուք զնս: 13 *Եւ ասէ սամուէլ. մի՛ ոք մեռցի յաւուրս յայսմիկ. զի այսօր արար Տր զփրկութի իսրայէլի: 14 *Եւ խօսեցաւ սամուէլ ընդ ժողովրդեանն՝ և ասէ. երթիցուք 'ի գաղգաղայ և արասցուք նաւակատիս թագաւորութե: 15 *Եւ չոգաւ ամ ժողովուրդն 'ի գաղգաղայ. և էօծ անդ սամուէլ զսաւուղ 'ի թագաւոր առաջի Տն 'ի գաղգաղայ. և զոհեցին անդ զոհս խաղաղականս առաջի Տն. և ուրախ եղև անդ սամուէլ և ամ ժողովուրդն յոյժ:

‖ Վեր. 10. 27.

սաւուղ

## ԳԼ: ԺԲ:

1 Եւ ասէ սամուէլ ցամ արս իսրայէլ լացիս: ահաւասիկ լուայ ձայնի ձերում յամի, զոր ասացիք ինձ. և թագաւորեցուցի ձեզ թագաւոր: 2 *Եւ արդ աւադիկ թագաւոր երթայ առաջի ձեր: ես ծերացեալ եմ. երթայց՝ և նստայց. և որդիքդ իմ աւադիկ են 'ի միջի ձերում: և ես շրջեցայ առաջի ձեր 'ի մանկութէ իմմէ մինչև ցայսօր: ահաւասիկ կամ ես: 3 ‖*Տուք զինէն պատասխանի առաջի Տն և առաջի օծելոյ նորա. եթէ զեզն ուրուք առի. կամ զէշ ուրուք վարեցի. կամ յաղթահարեցի զք 'ի ձէնջ. կամ թէ զրկեցի ինչ զք: յոյր ձեռաց առի զհաս. կամ կօշիկս. տուք զինէն պատասխանի. և հատուցից ձեզ: 4 *Եւ ասեն ցսամուէլ. ոչ մեղար մեզ՝ և ոչ զրկեցեր զմեզ. և ոչ նեղեցեր զմեզ. և ոչ առեր 'ի ձեռաց ուրուք՝ և ոչ ինչ: 5 *Եւ ասէ սամուէլ ցժողովուրդն. վկայ լիցի Տր 'ի միջի ձերում. և վկայ օծեալն նորա՝ այսօր յաւուր յայսմիկ. զի ոչ գտէք 'ի ձեռին իմում, և ոչ ինչ: և ասեն՝ լիցի վկայ: 6 *Եւ խօսեցաւ սամուէլ ընդ ժողովրդեանն՝ և ասէ: վկայ լիցի Տր՝ որ արար զմովսէս և զահարօն. որ եհան զհարսն մեր յեգիպտոսէ: 7 *Եւ արդ կացէք յառաջ՝ և դատեցից զձեզ առաջի Տն: և պատմեցից ձեզ զամ արդարութիւն՝ զոր արար Տր 'ի միջի ձերում և 'ի հարսն ձեր: 8 *‖Յորժամ եմուտ յակոբ՝ և որդիք նորա յեգիպտոս. և լլկեաց զնս եգիպտոս. և աղաղակեցին հարքն մեր առ Տր. և առաքեաց Տր զմովսէս և զահարօն. և եհան զհարսն մեր յեգիպտոսէ. և բնակեցոյց 'ի տեղւոջս յայսմիկ: 9 *Եւ մոռացան զՏէր Ած իւրեանց: ‖ և մատնեաց զնս 'ի ձեռս սիսարայ զօրավարին յաբինայ՝ արքային ասորայ՝ և 'ի ձեռս այլազգեաց. և 'ի ձեռս թագաւորին մովաբայ. և պատերազմեցան ընդ նոսա: 10 *Եւ աղաղակեցին առ Տր՝ և ասեն: մեղաք՝ զի թողաք զՏր՝ և ծառայեցաք բահաղիմայցն. և անտառացն. և արդ ապրեցո զմեզ 'ի ձեռաց թշնամեաց մերոց՝ և ծառայեսցուք քեզ: 11 *‖Եւ առաքեաց Տր զյերոբովաղ. և զբարակ. և զյեփթայէ: և զսամփսոն. և ապրեցոյց զձեզ 'ի ձեռաց թշնամեաց ձերոց շուրջանակի. և բնակեցայք վստահութբ: 12 *Եւ տեսէք՝ զի նաաս ամմոնացի եկն 'ի վր ձեր. և ասացիք՝ ‖ոչ այդպէս. այլ զի թագաւոր թագաւորեսցէ 'ի վերայ մեր: և Տր Ած մեր թագաւոր մեր: 13 *Եւ արդ աւադիկ թագաւորդ՝ զոր ընտրեցիք. և զոր խնդրեցիք. և ահա ետ ձեզ Տէր թագաւոր: 14 *Եթէ երկնչիցիք 'ի Տէ՝ և ծառայիցէք նմա՝ և լուիցէք ձայնի նորա՝ և ոչ հեստիցէք բերանոյ Տն. և լինիցիք դուք՝ և թագաւորն որ թագաւորեսցէ ձեզ, երթալ զկնի Տն. ոչ եղիցի ձեռն Տն 'ի վերայ ձեր և 'ի վր թագաւորին ձերոյ: 15 *Ապա թէ ոչ լուիցէք ձայնի Տն, և հեստիցէք բերանոյ Տն, եղիցի ձեռն Տն 'ի վերայ ձեր՝ և 'ի վր թագաւորին ձերոյ: 16 *Եւ արդ կացէք՝ և տեսէք զբանս զայս մեծ. զոր արասցէ Տէր առաջի աչաց ձերոց: 17 *Ոչ ապաքէն հունձք ցորենոյ են այսօր. կարդացից առ Տր՝ և տացէ ձայնս և անձրևս. և գիտասջիք՝ և տեսջիք՝ թէ մեծ է չարութի ձեր՝ զոր արարիք առաջի Տն խնդրել ձեզ թագաւոր: 18 *Եւ կարդաց սամուէլ առ Տր. և ետ Տր ձայնս և անձրևս յաւուր յայնմիկ: 19 *Եւ երկեաւ ամ ժողովուրդն յոյժ 'ի Տէ և 'ի սամուէլէ: և ասէ ամ ժողովուրդն ցսամուէլ. կա՛ց յաղօթս առ Տր Ած քո վն ծառայից քոց՝ և մի՛ մեռցուք: զի յաւելաք յամ մեղս մեր և 'ի չարիս. 20 և խնդրեցաք մեզ թագաւոր: *Եւ ասէ սամուէլ ցժողովուրդն. մի՛ երկնչիք. դուք արարիք զայդ ամ չարիս: բայց մի՛ խոտորիցիք 'ի Տէ. և ծառայեցէք Տն յամ սրտէ ձերմէ: 21 *Եւ մի՛ երթայցէք զհետ ոչ ընչիցն. որք զոչ ինչ վճարեն. և ոչ փրկեն. քանզի չեն ստուածք: 22 *Զի ոչ մերժեսցէ Տր

զժո_

‖ Սիրաք. 46.22.

‖ Ծննդ. 46.5.

‖ Դատ. 4. 2.

‖ Դատ. 6.14.

‖ Վեր. 8.19. և 10. 19.

զժողովուրդ իւր վասն անուան իւրոյ մեծի. զի հեզութ՟բ եառ զձեզ Տէր իւր ժողովուրդ։ 23 *Եւ ինձ քաւ լիցի մեղանչել Տ՟ն. հեղգալ առ 'ի չառնելոյ աղօթս վասն ձեր. (և ծառայեցէք Տ՟ն.) և ցուցից ձեզ զճանապարհն զբարի և զուղիղ։ 24 *Բայց երկերուք 'ի Տ՟է. և ծառայեցէք նմա ճշմարտութ՟բ յամենայն սրտէ ձերմէ. քանզի տեսէք զմեծամեծսն՝ զոր արար ընդ ձեզ։ 25 *Եւ եթէ խարդախութ՟բ խարդախիցէք, և դուք և թագաւորն ձեր սատակիցիք։

## ԳԼ: ԺԳ:

‖ Մ այր. 15. 17.

1 Որդի ‖ տարևոր սաւուղ 'ի թագաւորել իւրում. և երկուս ամս թագաւորեաց 'ի վ՟ր ի՟ղի։ 2 *Եւ ընտրեաց իւր սաւուղ երիս հազարս արս յարանցն իսրայէլի. և էին ընդ նմա երկու հազարք 'ի մաքմաս և 'ի լերինն բեթելայ։ էին ընդ յօնաթանու հազար 'ի գաբաայ բենիամինի։ և զմնացորդս ժողովրդեանն արձակեաց յիւրաքանչիւր բնակութիւնս։ 3 *Եւ եհար յօնաթան զնասիբ այլազգի՝ որ էր 'ի բլրին։ և լուան այլազգիքն։ և սաւուղ փող եհար ընդ ա՟մ երկիրն՝ և ասէ. եթէ անգոսնեցին ծառայքն։

լուիցեն եբրայեցին

4 *Եւ լուաւ ա՟մ իսրայէլ, ասեն. եթէ եհար սաւուղ զնասիբ այլազգի. և յամօթ արար ի՟էլ զայլազգիսն։ և գոչեաց ժողովուրդն զհետ սաւուղայ 'ի գաղգաղայ։ 5 *Եւ այլազգիքն ժողովեալ էին 'ի պատերազմ՝ ընդ իսրայէլի. և ելին 'ի վ՟ր իսրայէլի երեսուն հազար կառաց. և վեց հազար հեծելոց. և ժողովուրդն իբրև զաւազ առ եզերբ ծովու բազմութ՟բ. ելին և բանակեցան 'ի մաքմաս. յանդիման բեթորոնայ ընդ հարաւ։ 6 *Եւ ետես այր ի՟էի եթէ անձուկ է նմա մերձենալ առ նա. և թաքեաւ ժողովուրդն յայրս. և 'ի գումս. և 'ի վէմս. և 'ի խորխորատս. և 'ի ջրհորս։ 7 *Եւ որք անցանելոցն էին ընդ յորդանան՝ անցին յերկիրն գադայ և գաղայադու։ և սաւուղ դեռ անդէն ևս էր 'ի գաղգաղայ՝ և ա՟մ ժողովուրդն թօթափեցան 'ի նմանէ։ 8 *Եւ դադարեաց զեօթն օր վկայութեան՝ ո՟պ և ասաց սամուէլ։ և ոչ եկն սամուէլ 'ի գաղգաղայ՝ և ցրուեցաւ ժողովուրդն իւր 'ի նմանէ։ 9 *Եւ ասէ սաւուղ՝ մատուցէք՝ զի արարից ողջակէզս՝ և խաղաղականս։ և եհան զողջակէզսն։ 10 *Եւ եղև իբրև կատարեաց մատուցանել զողջակէզսն, եկն սամուէլ։ և ել սաւուղ ընդ առաջ նո՟ր օրհնել զնա։

11 *Եւ ասէ սամուէլ։ զի՞նչ գործեցեր. և ասէ սաւուղ։ զի տեսի՝ թէ ցրուեցաւ ժողովուրդ իմ յինէն. և դու ոչ եկիր՝ ո՟պ ուխտեցեր 'ի վկայութեան աւուրցն. և այլազգիքն ժողովեցան 'ի մաքմաս։ 12 *Եւ ասացի՝ թէ արդ իջանիցեն այլազգիքն 'ի վերայ իմ 'ի գաղգաղայ. և զերեսս Տ՟ն չեր աղաչեալ. ժտեցայ՝ և մատուցի զողջակէզսն։ 13 *Եւ ասէ սամուէլ ցսաւուղ. 'ի զո՞ւր է քեզ. զի ոչ պահեցեր զպատուիրան իմ, զոր պատուիրեաց Տ՟ր։ զի այժմ հաստատեր Տ՟ր զթագաւորութիւն քո 'ի վ՟ր ի՟ղի մինչև յաւիտեան։ 14 *Բայց արդ մի կացցէ թագաւորութիւն քո. ‖ և խնդրեսցէ իւր Տ՟ր այր ըստ սրտի իւրում. և տացէ զնա պատուիրանաւ իշխան 'ի վ՟ր ժողովրդեան իւրոյ։ զի ոչ պահեցեր՝ զորինչ պատուիրեաց քեզ Տ՟ր։

‖ Գործ. 13. 22.

15 *Եւ յարեաւ սամուէլ՝ և գնաց 'ի գաղգաղայ զճանապարհ իւր։ (և մնացորդք ժողովրդեանն ելին զհետ սաւուղայ ընդ առաջ պատերազմականն ժողովրդեանն։) և 'ի հասանել նո՟ց 'ի գաղգաղայ 'ի գաբաայ բենիամինի։ հանդէս արար սաւուղ ժողովրդեանն գտելոյ ընդ նմա. իբրև վեցհարիւրոց արանց։ 16 *Եւ սաւուղ՝ և յօնաթան որդի նո՟ր՝ և ժողովուրդն գտեալ ընդ նոսա՝ նստան 'ի գաբաայ բենիամինի և այլազգիքն բանակեալ էին 'ի մաքմաս։ 17 *Եւ ելանէր ապականիչն յանդէ այլազգեացն յերիս առաջս։ առաջ մի հայէր ընդ ճանապարհն ոփերայ յաղբիւրն սոգոլգայ։ 18 *Եւ առաջ մի ընդ ճանապարհն՝ որ հայէր 'ի բեթորոն. և առաջ մի ընդ ճանապարհն՝ որ հայէր 'ի գաբայէ յառեալ 'ի գայի, սաբային անապատին։ 19 *Եւ դարբին երկաթոյ ոչ գտանիւր յա՟մ երկրին ի՟էլի. քանզի ասէին այլազգիքն եթէ գուցէ առնիցեն եբրայեցիքն զսուսեր՝ և զգեղարդ։ 20 *Եւ իջանէին ա՟մ ի՟էլացիքն յերկիրն այլազգեաց թեքել իւրաքանչիւր զգերանդի իւր՝ և զգործի իւր. և իւրաքանչիւր զփայտատ իւր. և զմանգաղ իւր։ 21 *Եւ էին կութք պատրաստք հնձելոյ։ և կահին երեք սկեղք կացնոյ էին, խոփոյ և մանգաղի՝ յարդ հանդոյն նմին։ 22 *Եւ եղև յաւուրս պատերազմին՝ որ 'ի մաքմաս. և ոչ գտանիւր սուսեր՝ և գեղարդ 'ի ձեռին ա՟մ ժողովրդեանն՝ որք էին ընդ սաւուղայ՝ և ընդ յօնաթանու որդւոյ նորա։ և գտաւ միայն սաւուղայ՝ և յօնաթանու որդւոյ նո՟ր։ 23 *Եւ ել 'ի ճամբար այլազգեացն

յայն-

յայնկոյս մաքմասայ. և հօր իւրում ոչ եհան 'ի վեր ։

## ԳԼ ։ ԺԴ ։

1 Եւ եղև օր. և ասէ յովնաթան որդի սաւուղայ ցպատանին, զկապարճակիրն իւր. եկ՝ անցցուք 'ի կիրճս այլազգեացն յայնկոյս. և հօր իւրում ոչ պատմեաց ։ 2 * Եւ սաւուղ նստէր 'ի գլուխ բլրոյն ը̅ ննձնենեան 'ի մագդովն. և էին ընդ նմա իբրև վեց հարիւր այր 'ի ժողովրդենէն ։ 3 * Եւ աքիա որդի աքիտովբայ եղբօր քաբէդի. ‖ որդւոյ փենեհեսի որդւոյ ղևեայ քահանայի Ա̅յ 'ի սելով՝ որ կրէր՝ զեփուտն, և ժողովուրդն ոչ գիտէր եթէ երթեալ իցէ յովնաթան ։ 4 * Ի մէջ կրճին էր. ընդ որ խնդրէր անցանել յովնաթան 'ի ճամբար այլազգեաց 'ի կիրճս ։ և քարաժայռք յայսմ կողմանէ. և քարաժայռք յայնմ կողմանէ. անուն միումն բազէս. և անուն միւսումն սենաար. 5 * Եւ ժայռ մի 'ի հիւսիսոյ՝ որ երթայր ընդ մաքմաս. և միւսև ժայռ՝ որ երթայր 'ի հարաւոյ 'ի գաբայէ ։ 6 * Եւ ասէ յովնաթան ցպատանին զկապարճակիրն իւր ։ եկ անցցուք 'ի կիրճս անթլփատիցն այնոցիկ. թերևս արասցէ ինչ մեզ Տր̅. ‖ զի ոչ ինչ է խտիր Տն̅ ապրեցուցանել բազմօք կամ սակաւուք ։ 7 * Եւ ասէ ցնա կապարճակիրն իւր. արա զամ̅ ինչ՝ յոր և յօժարեսցի սիրտ քո. ահաւասիկ ես ընդ քեզ եմ. որպ̅ սիրտ քո՝ սիրտ իմ ։ 8 * Եւ ասէ յովնաթան՝ ահաւասիկ մեք անցանեմք առ արսն. և յափխիթերս երթիցուք առ նոսա ։ 9 * Եթէ ասիցեն ցմեզ. 'ի բաց կացէք այտի մինչև պատմեսցուք ինչ ձեզ. զտեղի կալցուք՝ և մի ելցուք առ նս̅ ։ 10 * Ապա թէ ասիցեն՝ ելէք առ մեզ. ելցուք. զի մատնեաց զնոսա Տր̅ 'ի ձեռս մեր. այս լիցի մեզ նշանակ ։ 11 * Եւ մտին երկոքեան 'ի կիրճս այլազգեացն ։ և ասեն այլազգիքն՝ ահա եբրայեցիքն ելանեն 'ի ծակուց իւրեանց՝ ուր թաքուցեալ էին ։ 12 * Եւ պատասխանի ետուն արք կրճացն՝ և ասեն ցյովնաթան՝ և ցկապարճակիրն. ելէք առ մեզ՝ և ծանուսցուք ձեզ բան ։ և ասէ յովնաթան ցկապարճակիրն իւր. եկ զկնի իմ ‖ զի մատնեաց զնոսա Տր̅ 'ի ձեռս Իէլի ։ 13 * Եւ ել յովնաթան յափսիթերս. և կապարճակիրն նր̅ ը̅ նմա. և հայեցան ընդդէմ յովնաթանու. և եհար զնոսա. և կապարճակիրն տայր սատակ զհետ նր̅ ։ 14 * Եւ եղեն առաջին հարուածքն՝ զոր եհար զնս̅ յովնաթան՝ և կապարճակիրն իւր՝ իբրև քսան արանց. նետիւք և բռնաքարամբք դաշտին ։ 15 * Եւ եղև խռովութիւն յանդին՝ և 'ի բանակին. և ամ̅ ժողովուրդն՝ որք 'ի կիրճսն էին՝ և ապականիչքն զարհուրեցան՝ և ոչ կամէին աշխատել. և դղրդեցաւ երկիրն. և եղև ահ 'ի Տե̅է ։ 16 * Եւ տեսին դէտքն սաւուղայ 'ի գաբաայ բենիամինի. և ահա խռովեալ էր բանակն յայսկոյս և յայնկոյս ։ 17 * Եւ ասէ սաւուղ ցժողովուրդն՝ որ ը̅ նմա. հանդէս արարէք՝ և տեսէք՝ ով երթեալ իցէ 'ի մէնջ ։ և հանդէս արարին. և ոչ գտանիւր յովնաթան՝ և կապարճակիր նր̅ ։ 18 * Եւ ասէ սաւուղ ցաքիայ. մատո՛ զեփուտ. քանզի նա կրէր զեփուտն. զի էր տապանակն Ա̅յ 19 յաւուր յայնմիկ առաջի Իէլի ։ * Եւ եղև մինչդեռ խօսէր սաւուղ ընդ քահանային. և աղաղակ 'ի բանակին այլազգեաց երթալով երթայր՝ և յաճախէր ։ և ասէ սաւուղ ցքահանայն՝ ամփոփեա՛ զձեռս քո ։ 20 * Եւ եկ սաւուղ՝ և ամ̅ ժողովուրդն որ ընդ նմա. և եկին մինչև ցպատերազմն ։ և ահա եղև սուր առն 'ի վ̅ր ընկերի իւրոյ. և աղմուկ մեծ յոյժ ։ 21 * Եւ ծառայքն՝ որք էին ընդ այլազգիսն յերէկն և յեռանդն՝ որք ելեալք էին ընդ բանակին. դարձան անդրէն լինել ընդ Իէլի. և ընդ սաւուղայ՝ և յովնաթանու ։ 22 * Եւ ամ̅ Իէլ՝ որք թաքուցեալք էին 'ի լեռինն եփրեմի. իբրև լուան՝ եթէ փախեան այլազգիքն՝ խմբեցան և նք̅ 23 եւս զհետ նց̅ 'ի պատերազմ ։ * Եւ փրկեաց Տր̅ յաւուր յայնմիկ զիսրայէլ. և պատերազմն պատեցաւ զբեթաւնաւ ։ 24 * Եւ ամ̅ ժողովուրդն էր ընդ սաւուղայ իբրև տասն հազար արանց ։ և էր պատերազմն ցրուեալ ընդ ամ̅ քաղաքսն 'ի լեռինն եփրեմի ։ և սաւուղ անգիտացաւ յանգիտութիւն յաւուր յայնմիկ. և նզովեաց զժողովուրդն՝ և ասէ. անիծեալ լիցի մարդն՝ որ կերիցէ հաց մինչև ցերեկոյ. և խնդրեցից վրէժ 'ի թշնամեաց իմոց ։ և ոչ ճաշակեաց ամ̅ ժողովուրդն հաց ։ 25 * Եւ ամ̅ երկիրն ճաշէր ։ և անդ էր անտառ մեղուաց հանդէպ անդին ։ 26 * Եւ եմուտ զօրն 'ի մեղուանոցն. և անցանէին քրթմնջելով. և ոչ էր ոք՝ որ դարձուցանէր զձեռն իւր 'ի բերան իւր. քանզի երկեաւ ժողովուրդն 27 յերդմանէն Տն̅ ։ * Եւ յովնաթանու չէր լուեալ՝ եթէ երդմնեցոյց հայր նր̅ զժողովուրդն. և կարկառ զծայր գաւազանի իւրոյ՝ որ 'ի ձեռին իւրում. և եհար 'ի խորիսխ մեղու. և դարձոյց

զձեռն

Margin notes: ‖ Ա Թգ. 4.21. — հեղեայ — ‖ 2. Մնաց. 14.11. — ‖ 1. Մակ. 4.30. — Տապանակն Ա̅յ — Եբրայեցիքն

զձեռն իւր 'ի բերան իւր . և բացան աչք նր : * Եւ պատասխանի ետ ոմն 'ի 28 զօրուէ անտի՝ և ասէ . երդմնեցուցանելով երդմնեցոյց հայր քո զժողովուրդս՝ և ասէ . անիծեալ լիցի այր . որ կերիցէ հաց մինչև ցերեկոյ : և լքաւ ժողովուրդն : * Եւ իբրև գիտաց յոնա- 29 թան, ասէ . կորոյս հայր իմ զերկիրս . զի թէ տեսին աչք իմ, վս զի ճաշակեցի զսակաւ մի 'ի մեղուէս յայսմանէ : * Եւ թէ ուտելով կերեալէր այ- 30 սօր ժողովրդեանն յաւարէ թշնամեաց իւրեանց՝ զորս գտին . մեծամեծ հարուածս առնէին յայլազգիսն :
* Եւ եհար յաւուր յայնմիկ յայլազ 31 գեացն 'ի մաքմաս . և աշխատեցաւ ժողովուրդն յոյժ : * Եւ յարձակեցաւ 32 ժողովուրդն յաւարն : և էառ ժողովուրդն զհօտս՝ և զանդեայս՝ և զծընունդս արջառոյ . և սպանանէր 'ի վր երկրի . և ուտէր ժողովուրդն հանդերձ արեամբն : * Ազդ եղև սաւու- 33 ղայ՝ և ասեն՝ թէ մեղաւ ժողովուրդն Տն . ‖ զի կերին արեամբ հանդերձ : և ասէ սաւուղ 'ի գեթթամայ : անօրինեցայք . թաւալեցուցէք ինձ այսր վէմ մի մեծ : * Եւ ասէ սաւուղ . սփռե 34 ցարո՛ւք ընդ ժողովուրդդ՝ և ասացէ՛ք ցդոսա . մատուցանել այսր իւրաքանչ իւր զարջառ իւր . և իւրաքանչիւր զոչխար իւր . և սպանէ՛ք 'ի վերայ դորա՝ և կերա՛յք զդոսա . և մի՛ մեղանչէք Տն ուտելով հանդերձ արեամբ : և մատոյց ժողովուրդն իւրաքանչիւր՝ որ 'ի ձեռին իւրում զցայգն . և սպանանէին անդ : * Եւ շինեաց անդ սաւ- 35 ուղ սեղան Տն : զայն նախ սկսաւ սաւուղ շինել սեղան Տն : * Եւ ասէ սաւ 36 ուղ . իջցո՛ւք զհետ այլազգեացն ըզցայգս . և յափշտակեսցո՛ւք 'ի նոցանէն մինչև լուսասցի օր . և մի՛ թողցուք 'ի նոցանէ զայր : և ասեն ցնա . զամ, որինչ հաճոյ թուի առաջի աչաց քոց՝ արա՛ : ասէ քահանայն . մատիցուք աստ առ Աճ : * Եւ եհարց սաւուղ զԱծ . իջ 37 ցուք զհետ այլազգեացն . եթէ մատնեսցես զնս 'ի ձեռս իէլի . և ո՛չ արար նմա պատասխանի Տր յաւուր յայնմիկ : * Եւ ասէ սաւուղ . մատուցէ՛ք 38 այսր զամ ազգս իէլի . և գիտասջի՛ք՝ և տեսջի՛ք՝ թէ վասն ո՞յր եղեն այսօր մեղքս այսոքիկ : * Զի կենդանի է 39 Տր . որ փրկեաց զիէլ . զի եթէ զյոնաթանայ որդւոյ իմոյ տացէ պատասխանի՝ մահու մեռցի : և ո՛չ ոք էր՝ որ տայր պատասխանի յամ ժողովրդենէն : * Եւ ասէ ցամ այր իէլի՝ դուք 40 լինիջիք 'ի ծառայութի . և ես, և յոնաթան որդի իմ եղիցուք 'ի ծառայութի : և ասէ ժողովուրդն ցսաւուղ . որինչ հաճոյ իցէ առաջի աչաց քոց՝ 41 արա՛ : * Եւ ասէ սաւուղ : Տր Աճ իէլի . զի՞ է, զի ոչ ետուր պատասխանի ծառայի քում յաւուր յայսմիկ . եթէ յիս իցեն այսօր՝ և եթէ 'ի յոնաթան որդի իմ անօրէնութի՛ք՝ տուր յայտնութի : և եթէ 'ի ժողովրդեան քում իէլի իցէ անիրաւութի՝ տուր զբաւութի : և արկին վիճակս յոնաթանու՝ և սաւուղայ . և ել ժողովուրդն արտաքս :
42 * Եւ ասէ սաւուղ . արկէ՛ք վիճակ ը իս՝ և ընդ յոնաթան որդի իմ . և որում հանիցէ Տր զվիճակն՝ մեռցի : և ասէ ժողովուրդն ցսաւուղ . մի՛ լիցի բանդ այդ : և ստիպեաց սաւուղ զժողովուրդն . և արկին ընդ նա՝ և ընդ յոնաթան որդի նր . և ել վիճակն յոնա 43 թանու : * Եւ ասէ սաւուղ ցյոնաթան : պատմեա՛ ինձ՝ զի՞նչ արարեր . և պատմեաց նմա յոնաթան՝ և ասէ . ճաշակելով ճաշակեցի ծայրիւ գաւազանին՝ որ 'ի ձեռին իմում, զսակաւ մի 44 մեղր . և ահա մեռանիցիմ ես : * Եւ ասէ սաւուղ . օնև օն արասցէ ինձ Աճ և օնև օն յաւելցէ . եթէ ոչ մահու մե 45 ռանիցես այսօր : * Եւ ասէ ժողովուրդն ցսաւուղ . քա՛ւ լիցի՝ եթէ մեռանիցի այսօր . որ արար զփրկութիս զայս մեծ իէլի . կենդանի է Տր՝ եթէ անկցի 'ի հերոյ գլխոյ նր յերկիր : զի ժողովուրդս Այ արար զմեծ զայսսիկ : և եկաց ժողովուրդն յաղօթս առ Տր վս յոնաթանու յաւուր յայն- 46 միկ . և ո՛չ մեռաւ : * Եւ դարձաւ սաւուղ յայլազգեացն . և այլազգիքն գնա 47 ցին 'ի տեղիս իւրեանց : * Եւ եհաս սաւուղայ թագաւորել . և վիճակեցաւ 'ի վր իէլի . և տայր պատերազմ շուրջ ընդ ամ թշնամիս իւր . և ընդ մովաբայ . և ընդ որդիսն ամոննայ : ը եդօմայ . և ընդ բեթօրայ . և ընդ թագաւորին սուբայ . և ընդ այլազգիսն . և ուր շրջէր՝ փրկէր : և առնէր զօրու 48 թիս սաստիկս : * Եւ եհար զամաղէկ՝ և ապրեցոյց զիէլ 'ի ձեռաց կո- 49 խողաց նց : * ‖ Եւ էին որդիք սաւուղայ . յոնաթան . և յեսուր . և մեղքի սաւէ : և անուանք երկուց դստերաց նր . անուն անդրանկանն . ներոբ . 50 և անուն երկրորդին մեղքող : * Եւ անուն կնոջ նր աքինոամ . դուստր աքիմաասայ . և անուն զօրավարին նորա աբեններ, որդի ներեայ . որդւոյ ըն- 51 տանեաց սաւուղայ : * Եւ կիս՝ հայր սաւուղայ : և ներ՝ հայր աբեններայ . ( և որդիք յամինայ որդւոյ աբիելի

‖ 2. Օրէ 12. 17. Ղև 23.

‖ 1. Մն 8. 33.

երէ.

երեսուն և ութն ։ ) * Եւ էր պատերազմ սաստիկ ընդ այլազգիսն զամ աւուրս սաւուղայ. և տեսեալ սաւուղայ զամ զօրաւոր՝ և զամ որդի զօրութեն ժողովեաց զնոսա առ ինքն ։ 52

## Գլ ։ ԺԵ ։

1 Եւ ասէ սամուէլ ցսաւուղ, զիս առաքեաց Տր օծանել զքեզ թագաւոր 'ի վերայ ժողովրդեան իւրոյ իէլի. և արդ լուր ձայնի պատգամաց Տն ։ 2 * Այսպէս ասէ Տր զօրութեց ։ արդ խնդրեցից զվրէժ. ‖ զոր արար ամաղէկ ընդ իսրայէլի. զիարդ պատահեցաւ նմա 'ի ճանապարհի ելանելոյ նր յեգիպտոսէ ։ 3 * Եւ արդ երթ՝ և հարցես զամաղէկ, և զյարիմ. և զամ որինչ նորա իցէ. և մի ապրեցուցանիցես 'ի նմանէ. և սատակեսցես զնա ։ և կորուսցես յառնէ մինչև ցկին. և 'ի տղայոյ մինչև ցստնդիացն. և յարջառոյ մինչև ցոչխար. և յուղտուէ մինչև ցէշ ։ 4 * Եւ հրաման ետ սաւուղ ժողովրդեանն. և հանդէս արար նց յաղիմ. չորեքհարիւր հազարաց դասականաց. և երեսուն հազարաց դասականաց յուդայ ։ 5 * Եւ եկն սաւուղ մինչև ցքաղաքս ամաղեկայ. և դարանամուտ եղեն 'ի հեղեղատին ։ 6 * Եւ ասէ սաւուղ ցկինեցին. երթ խոյս տուր 'ի միջոյ ամաղեկացւոյն. զի մի սատակեցից զքեզ ընդ նմա. և դու արարեր ողորմութի ընդ ամ որդիսն իէլի յելանելն նց յեգիպտոսէ ։ և խոյս ետ կինեցին 'ի միջոյ ամաղեկայ ։ 7 * Եւ եհար սաւուղ զամաղէկ. յեւիլայ մինչև 'ի սուր. որ է հանդէպ եգիպտոսի ։ 8 * Եւ կալաւ զթագաւորն ամաղեկայ զագագ կենդանւոյն ։ և զամ ազգն յարիմայ կոտորեցին սրով սուսերի ։ 9 * Եւ ապրեցոյց սաւուղ և ամ ժողովուրդն զագագ կենդանի ։ և զընտիրս խաշանց. և զանդեոց ։ և զկերակրոյ. և զայգեաց. և զամ բարութեց. և ոչ կամեցաւ սատակել զնա. և զամ գործ զանարգ և զարհամարհեալ սատակեցին ։ 10 * Եւ եղև բան Տն առ սամուէլ՝ և ասէ ։ 11 * Զղջացեալ եմ, զի թագաւորեցուցի զսաւուղ 'ի թագաւոր. զի դարձաւ յինէն յետս, և զբանս իմ ոչ պահեաց ։ և տրտմեցաւ սամուէլ. և գոչեաց սամուէլ առ Տր զգիշերն ամ ։ 12 * Եւ կանխեաց սամուէլ՝ և գնաց ընդ առաջ իէլի, ընդ առաւօտն ։ և ազդ եղև սամուելի՝ և ասեն. եկն սաւուղ 'ի կարմելոս՝ և կանգնեաց իւր ձեռն. և դարձոյց զկառսն՝ և էջ 'ի գաղգաղայ ։ և եկն սամուէլ առ սաւուղ. և ահա նա մատուցանէր ողջակէզս Տն զառաջինս աւարոյն՝ զոր էած յամաղեկայ ։ 13 * Եւ իբրև եկն սամուէլ առ սաւուղ՝ ասէ ցնա սաւուղ. օրհնեալ դու 'ի Տէ. կացուցի զոր ինչ խօսեցաւ Տր ։ 14 * Եւ ասէ սամուէլ ։ և զի՞նչ է բարբառ հօտիցդ այդոցիկ յականջս իմ. և բարբառ արջառոյդ՝ զոր ես լսեմ ։ 15 * Եւ ասէ սաւուղ ։ յամաղեկայ ածի զայդ՝ զոր ապրեցոյց ժողովուրդդ զընտիրս խաշանց և զարջառոց. զի զոհեսցեն Տն Այ քում ։ և զայլսն սատակեցի ։ 16 * Եւ ասէ սամուէլ ցսաւուղ ։ անսա և պատմեցից քեզ. զոր խօսեցաւ Տր ընդ իս յայսմ գիշերի ։ և ասէ ցնա՝ խօսեաց. 17 * Եւ ասէ սամուէլ ցսաւուղ ։ ո՞չ ապաքէն փոքր ես դու առաջի նր. զօրավար դաւազանի ցեղին իէլի ։ և էօծ զքեզ Տր թագաւոր 'ի վերայ իէլի ։ 18 * Եւ առաքեաց զքեզ Տր 'ի ճանապարհ, և ասէ ցքեզ. երթ՝ և սատակեա զմեղանչականսն յիս զամաղէկ ։ և տացես ընդ նոսա պատերազմ մինչև վաղճանեսցես զնոսա ։ 19 * Եւ ընդէ՞ր ոչ լուար ձայնի Տն. այլ յարձակեցար դիմել 'ի վերայ աւարին. և արարեր չար առաջի Տն ։ 20 * Եւ ասէ սաւուղ ցսամուէլ. վասն լսելոյ իմոյ ձայնի ժողովրդեանն ։ և չոգայ 'ի ճանապարհն՝ զոր առաքեաց զիս Տր ։ և ածի զագագ՝ արքայ ամաղեկայ ։ և զամաղէկ սատակեցի ։ 21 * Եւ էառ ժողովուրդս յաւարէ անտի հօտս և անդեայս զընտիրս սատակմանն առաջի Տն Այ զոհել 'ի գաղգաղայ ։ 22 * Եւ ասէ սամուէլ ։ ‖ եթէ հաճո՞յ իցէ Տն ողջակէզ և զոհ իբրև լսել ձայնի Տն ։ ահա լաւ է ունկնդրութի քան զզոհ ընտիր. և հնազանդութի քան զճարպ խոյոց ։ 23 * Զի հմայք մեղք են. և ցաւս՝ և աշխատութիւն ածէ թերափդ 'ի վերայ ։ զի արհամարհեցեր զբան Տն. արհամարհեսցէ զքեզ Տր՝ չլինիլ թագաւոր 'ի վր իլի ։ 24 * Եւ ասէ սաւուղ ցսամուէլ. մեղայ՝ զի անցի զբանիւ Տն. և զբանիւ քով. զի երկեայ 'ի ժողովրդենէն և լուայ ձայնի նց ։ 25 * Եւ արդ բարձ զմեղս իմ. և դարձիր ընդ իս. և պագից երկիր Տն Այ քում ։ 26 * Եւ ասէ սամուէլ. ոչ դարձայց ընդ քեզ. զի արհամարհեցեր զբանն Տն. և արհամարհեսցէ զքեզ Տր չլինիլ թագաւոր 'ի վերայ իլի ։ 27 * Եւ դարձոյց սամուէլ զերեսս իւր 'ի գնալ ։ և բուռն եհար սաւուղ զտրանոյ կրկնոցի նորա և պատառեաց զնա ։ 28 * Եւ ասէ ցնա սամուէլ ‖ պատառեաց

‖ Ելից. 17.8.

‖ Ժող. 4.17. Ովսէէ. 6. 6. Մատ. 9.13. և 12.7.

‖ Ա. թագ. 28.17.

Տր զԹագաւորութիւն 'ի ձեռաց քոց յիսրայելէ այսօր. և տացէ զդա ընկերի քում լաւագունի քան զքեզ։ 29 *Եւ բաժանեսցի Իէլ ընդ երկու. և ոչ դարձցի. և ոչ զղջասցի Տր. զի ոչ եթէ իբրև զմարդ է 'ի զղջանալ. ինքնին սպառնասցի ։ 30 *Եւ ասէ սաւուղ. մեղայ։ այլ մեծարեա՛ զիս առաջի ծերոց ժողովրդեան իմոյ. և առաջի Իէլի. և դարձիր ընդ իս. և երկիր պագից Տն Այ քում։ 31 *Եւ դարձաւ սամուէլ զկնի սաւուղայ. և երկիր եպագ Տն։ 32 *Եւ ասէ սամուէլ. մատուցէք առ իս զագագ Թագաւորն ամաղեկայ. և մատեաւ առ նա ագագ դողալով. և ասէ ագագ. եթէ այսպէս դառն իցէ մահ ։ 33 *Եւ ասէ սամուէլ ցագագ. զորօրինակ որդեկորոյս արար սուր քո զկանայս. նոյնպէս որդեկորոյս լիցի 'ի կանանց մայր քո։ և սպան սամուէլ զագագ առաջի Տն 'ի գաղգաղայ։ 34 *Եւ գնաց սամուէլ յարիմաթեմ. և սաւուղ ել 'ի տուն իւր 'ի գաբաայ։ 35 *Եւ ոչ ևս յաւել սամուէլ տեսանել զսաւուղ, մինչև ցօր մահուան իւրոյ. զի սուգ ունէր սամուէլ 'ի վր սաւուղայ։ և զղջացաւ Տր զի Թագաւորեցոյց զսաւուղ 'ի վր Իէլի ։

## ԳԼ: ԺԶ:

1 Եւ ասէ Տր ցսամուէլ. մինչև յերբ սուգ առնուս 'ի վր սաւուղայ. և ես անարգեցի զնա չԹագաւորել 'ի վր Իէլի. լից զեղջիւր քո իւղով, և եկ. առաքեմ զքեզ առ յեսսէ մինչև ցբեթղէհէմ. զի տեսի ես յորդւոցն նորա Թագաւորել ինձ 'ի Թագաւոր։ 2 *Եւ ասէ սամուէլ զիա՞րդ երթայց. և լուիցէ սաւուղ և սպանանիցէ զիս։ և ասէ Տր. ա՛ռ դու երինջ մի յարջառոց. և ասասցես. զոհել Տն եկի։ 3 *Եւ կոչեսցես զյեսսէ 'ի զոհն. և ցուցից քեզ զինչ առնիցես։ և օծցես զոր ես ասացից քեզ։ 4 *Եւ արար սամուէլ զամ զոր խօսեցաւ ընդ նմա Տր. և եկն 'ի բեթղէհէմ. և զարհուրեցան ծերք քաղաքին 'ի պատահել նմա. և ասեն՝ խաղաղութի՞ իցէ մուտ քո տեսանողդ։ 5 *Եւ ասէ՝ խաղաղութիւն է. զոհել Տն եկի. սրբեցարո՛ւք և ուրա՛խ լերուք ընդ իս այսօր։ և սրբեաց զյեսսէ և զորդիս նր. և կոչեաց զնոսա 'ի զոհն։ 6 *Եւ եղև 'ի մտանելն նոցա. ետես զեղիաբ և ասէ. այլ և առաջի իսկ Տն օծեալ իւր։ 7 *Եւ ասէ Տէր ցսամուէլ. մի՛ հայիր ընդ տեսիլ դորա։ և մի՛ 'ի մեծութի հասակի դորա. զի անարգեցի զդա։ զի ոչ եթէ որպէս տեսանիցէ մարդ տեսանէ Ած։ զի մարդ հայի յերեսս. ‖ և Ած հայի 'ի սիրտս ։ 8 *Եւ կոչեաց յեսսէ զամինադաբ. և եհանց առաջի սամուէլի։ և ասէ. և ոչ զդա ընտրեաց Տէր։ 9 *Եւ անցոյց յեսսէ զսամա։ և ասէ. և ոչ զդա ընտրեաց Տր։ 10 *Եւ անցոյց յեսսէ զեօԹանեսին զորդիսն իւր առաջի սամուէլի։ և ասէ սամուէլ ցյեսսէ. ոչ ընտրեաց 'ի դոցանէ Տէր։ 11 *Եւ ասէ սամուէլ ցյեսսէ. ա՞յդչափ են մանկտիքդ։ և ասէ՝ կայ միւս ևս փոքրիկ և արածէ զխաշն։ և ասէ սամուէլ ցյեսսէ. առաքեա՛ և ա՛ծ զնա. զի ոչ բազմեսցուք մինչև 'ի գալ նորա այսր։ 12 *Եւ առաքեաց և եած զնա։ և նա էր կարմիր. և աչօք գեղեցիկ. և բարւոք տեսլեամբ Տն։ և ասէ Տէր ցսամուէլ. արի՛ օծ զդաւիթ, զի դա է բարի։ 13 *Եւ էառ սամուէլ զեղջիւրն իւղոյ. և եօծ զնա 'ի մէջ եղբարց իւրոց։ ‖ և խաղաց հոգի Տն 'ի վր դաւԹի յօրէ յայնմանէ՝ և առ յապա։ և յարեաւ սամուէլ և գնաց յարիմաԹեմ։ 14 *Եւ հոգի Տն վերացաւ 'ի սաւուղայ։ և խեղդէր զնա այս չար 'ի Տէ։ 15 *Եւ ասեն ցնա ծառայքն իւր։ ահա այս չար 'ի Տէ խեղդէ զքեզ։ 16 *Խօսեսցին ծառայք քո առաջի քո և խնդրեսցեն տեառն մերում այր մի որ գիտիցէ երգել քնարաւ. և եղիցի 'ի հասանել 'ի վր քո այսու չարի որ յԱՅ, երգեսցէ քնարաւն և դիւր լիցի քեզ. և հանգուսցէ զքեզ։ 17 *Եւ ասէ սաւուղ ցծառայս իւր։ տեսէ՛ք ինձ այր մի որ բարւոք երգիցէ. և ածէ՛ք զնա առ իս։ 18 *Պատասխանի ետ մի ոմն 'ի մանկտւոյ նորա և ասէ. ահա տեսի զորդի յեսսեայ զբեթղէհեմացի. գիտէ զսաղմոս. և այր իմաստուն. և այր պատերազմող. և այր հանճարեղ. և ճարտարաբան. և այր գեղեցիկ տեսլեամբ, և Տէր ընդ նմա։ 19 *Եւ առաքեաց սաւուղ հրեշտակս առ յեսսէ. և ասէ։ առաքեա՛ առ իս զդաւիթ որդի քո. որ 'ի հօտի քումէ։ 20 *Եւ էառ յեսսէ արդու մի հացի. և տիկ մի գինւոյ. և ուլ մի յայծեաց. և առաքեաց 'ի ձեռն դաւիԹի որդւոյ իւրոյ սաւուղայ։ 21 *Եւ եմուտ դաւիԹ առ սաւուղ. և կայր 'ի սպասու առաջի նորա։ և սիրեաց զնա յոյժ. և եղև նորա կապարճակիր։ 22 *Եւ առաքեաց սաւուղ առ յեսսէ և ասէ. կացցէ դաւիԹ առաջի իմ. զի եգիտ շնորհս առաջի աչաց իմոց ։ 23 *Եւ լինէր յորժամ հասանէր այսն չար 'ի վր սաւուղայ, առնոյր դաւիթ զքնարն՝ և

նուա_

‖ Սաղմ. 7.10.

‖ 2. Թագ. 7. 8. Սաղմ. 77. 70. և 88.21 Գործ. 7.46. և 13.22.

նուագէր ձեռամբ իւրով. և հանգու-
ցանէր զսաւուղ. և զիւրանայր նմա
և մեկնիւր 'ի նմանէ այսն չար ։

## ԳԼ. ԺԷ.

1 Եւ ժողովեցին այլազգիքն զբա-
նակս իւրեանց 'ի պատերազմ. և
գումարեցան 'ի սոկքով հրէաստանի.
և բանակեցան ընդ սոկքով և ընդ
ազեկայ յափեսդոմմին ։ *2 Եւ սաւուղ
և արք իսրայէլի՝ ժողովեցան և նոքա
'ի հովիտն. և ճակատեցան 'ի պատե-
րազմ ընդդէմ այլազգեացն ։ *3 Եւ
այլազգիքն կային 'ի վ͞ր լերինն յայնմ
կողմանէ. և իէլ կայր 'ի վերայ լերինն
յայսմ կողմանէ. և հովիտն 'ի մէջ ն͞ց ։
*4 Եւ ել այր զօրաւոր 'ի ճակատէ այլ-
ազգեացն՝ գողիադ անուն ն͞ր, 'ի գե-
թայ ։ բարձրութի ն͞ր վեց կանգուն
և թզաւ ։ *5 Եւ սաղաւարտ 'ի գլուխ
նորա ։ և զրահս վերտս զգեցեալ . և
կշիռ զրահից ն͞ր հինգհազար սիկղ
պղնձոյ և երկաթոյ։ *6 Եւ սռնապանք
պղնձիք 'ի վ͞ր բարձից նորա. և վահան
պղնձի 'ի վ͞ր թիկանց ն͞ր ։ *7 Եւ բուն
գեղարդեան նորա իբրև զառոյի ոս-
տայնանկաց՝ և տէգ նորա 'ի վեցհար
իւր սկեղէ երկաթոյ. և զինակիր ն͞ր
առաջի նորա երթայր ։ *8 Եկն՝ եկաց.
ձայն ետ 'ի ճակատն իէլի՝ և ասէ ցն͞ց ։
ընդէ՞ր ելանէք ճակատել 'ի պատե-
րազմ՝ ընդդէմ մեր ։ ո՞չ ապաքէն ես
այլազգի եմ. և դուք եբրայեցիք ծա-
ռայք սաւուղայ. ընտրեցէք դուք ձեզ
այր մի և իջցէ առ իս ։ *9 Եթէ կարաս-
ցէ կռուել ընդ իս՝ և հարկանել զիս,
եղիցուք մեք ձեզ 'ի ծառայս ։ ապա
եթէ ես յաղթեցից և հարից զնա ,
եղիջիք դուք մեզ 'ի ծառայս . և ծա-
ռայեսջիք մեզ ։ *10 Եւ ասէ այլազգին ։
ահաւասիկ ես նախատեցի զճակատ-
իէլի յաւուր յայսմիկ . տուք այր մի. և
ես՝ և նա մենամարտիցուք երկոքեան։
*11 Իբրև լուաւ սաւուղ և ա͞մ իսրայէլ
զբանս այլազգւոյն , զահի հարան և
երկեան յոյժ ։ *12 Եւ ասէ դաւիթ որ-
դի առն եփրաթացւոյ. ‖ և նա 'ի բեթ-
ղեհեմ յուդայ՝ և անուն ն͞ր յեսսէ. և
էին ն͞ր որդիք ութ ։ և այրն յաւուրս
սաւուղայ ծերացեալ հասեալ յաւուրս ։
*13 ‖ Եւ գնացին երեք որդիքն յեսսեայ
մեծագոյնք , երթեալ զհետ սաւու-
ղայ 'ի պատերազմ. և անուանք որդ-
ւոց նորա երթելոց 'ի պատերազմ, ե-
ղիաբ անդրանիկ նորա. և երկրորդ ն͞ր
ամինադաբ . և երրորդ ն͞ր սամաա ։
*14 Եւ դաւիթ էր կրտսեր ։ և երեքին
մեծագոյնքն երթեալ էին զհետ սաւ-

Ռութ դ. իբ.
‖ Ա թգ. 16. 1.
‖ Ա թգ. 16. 8.

15 ւուղայ ։ *Եւ դաւիթ գնացեալ դար-
ձաւ 'ի սաւուղայ՝ արածել զոչխարս
16 հօր իւրոյ 'ի բեթղեհեմ ։ *Եւ մատու-
ցեալ այլազգւոյն՝ կանխեալ և անա-
գանեալ արձանանայր առաւօտս քառա-
17 սուն ։ *Եւ ասէ յեսսէ ցդաւիթ ցոր-
դի իւր . առ դու եղբարց քոց զարդու-
փոխինդոյս այսորիկ . և զտասն նկա-
նակս զայսոսիկ . և ընթա՛ 'ի բանակն
18 և տուր եղբարց քոց ։ *Եւ զտասն մա-
ճառակս զկաթին՝ տացես հազարա-
պետին . և տեսցես զողջոյն եղբարց
քոց . և եթէ պէտք ինչ իցեն նոցա ,
19 իմասցիս ։ *Եւ սաւուղ և ա͞մ այր իս-
րայէլացի՝ էին 'ի հովիտս կաղնւոյն .
պատերազմեալ ընդ այլազգիսն ։
20 *Եւ կանխեաց դաւիթ ընդ առաւ-
օտն . և եթող զոչխարս 'ի տա՛նարա-
ծականն ։ էառ՝ և գնաց՝ ո՞րպ և հրա-
մայեաց նմա յեսսէ . և եկն 'ի տափա-
րակն և 'ի զօրն՝ որ ելանէր 'ի ճակատն
և աղաղակեցին 'ի պատերազմին ։
21 *Եւ ճակատեցան իսրայէլացիքն և
այլազգիքն հանդէպ միմեանց՝ ճակատ
22 առ ճակատ ։ *Եւ եթող դաւիթ զզ-
կարասին յինքենէ 'ի ձեռն վանապա-
նին՝ և ընթացաւ 'ի ճակատն . և եկն
եհարց զողջունէ եղբարց իւրոց ։
23 *Եւ մինչդեռ նա խօսէր՝ ահա այրն
յամինացի ելանէր՝ գողիադ անուն ն͞ր,
փղշտացի 'ի գեթայ՝ 'ի ճակատուց այլ-
ազգեացն ։ և խօսեցաւ ըստ նմին բա-
24 նից . և լուաւ դաւիթ ։ *Եւ ա͞մ իէլ
'ի տեսանել իւրեանց զայրն՝ փախեան
յերեսաց նորա՝ և զարհուրեցան յոյժ ։
25 *Եւ ասէ այր իէլի . եթէ տեսանէ՞ք
զայրն զայն՝ որ ելանէ՝ զի նախատել
ելանէ զիէլ ։ և եղիցի այր՝ որ սպանա-
նիցէ զնա , մեծացուսցէ զնա արքայ
յոյժ մեծութբ՝ և զդուստր իւր տա-
ցէ նմա կնութե . և զտուն հօր նորա
26 արասցէ ազատ 'ի մէջ իէլի ։ *Եւ խօ-
սեցաւ դաւիթ ընդ արսն՝ որք շուրջ
կային զնովաւ՝ և ասէ . զի՞նչ առնիցէ
առն՝ որ հարկանիցէ զայլազգին զայն՝
և բառնայցէ զնախատինս յիսրայէլէ ։
և զի՞նչ է այլազգին այն անթլփատ՝
զի նախատեաց զճակատս Ա͞Յ կեն-
27 դանւոյ ։ *Եւ խօսեցաւ ընդ նմա ժո-
ղովուրդն ըստ նմին բանից՝ և ասէ .
այնպէս արասցի առն՝ որ սպանանիցէ
28 զնա ։ *Իբրև լուաւ եղիաբ եղբայր
ն͞ր երէց՝ զխօսիլ ն͞ր ընդ արսն , բար-
կացաւ սրտմտութբ եղիաբ դաւթի՝
և ասէ ։ ընդէ՞ր բնաւ իջեր այսր՝ և
յո՞յր ձեռն թողեր զսակաւ ոչխա-
րակն յանապատի անդ ։ ես գիտեմ
զհպարտութի քո՝ և զչարութի սրտի

քոյ. զի մի տեսանիցես զպատերազմն իջեր: *Եւ ասէ դաւիթ՝ և արդ զի՞նչ 29 արարի. ո՞չ ապաքէն բանք իցեն: *Եւ դարձաւ 'ի նմանէ 'ի միւս կողմն՝ 30 և խօսեցաւ ըստ նմին բանից: և ետ նմա պատասխանի ժողովուրդն ըստ առաջնոյ բանիցն: *Եւ լուան եղեն 31 բանքն՝ զորս խօսեցաւ դաւիթ. և պատմեցին առաջի սաւուղայ. և էառ զնա առ ինքն: *Եւ ասէ դաւիթ ցսաւուղ. 32 մի՛ անկցի սիրտ տեառն իմոյ 'ի վերայ իւր. ծառայ քո երթիցէ՝ և մարտիցի ընդ այլազգւոյն ընդ այնմիկ: *Եւ 33 ասէ սաւուղ ցդաւիթ: գուցէ ո՛չ կարիցես երթալ կռուիլ ընդ այլազգւոյն. զի դու մանուկ ես. և նա այր պատերազմող 'ի մանկութենէ իւրմէ: *Եւ 34 ասէ դաւիթ ցսաւուղ. ‖ արածէր ծառայ քո զխաշինս հօր իւրոյ. և յորժամ գայր առիւծ կամ արջ, և առնոյր զոչխար 'ի հօտէ անտի: *Եւ ելանէի ըզ 35 հետ նորա՝ և հարկանէի զնա. և կորզէի 'ի բերանոյ նր. և եթէ յառնէր 'ի վր իմ, ունէի զփողից նր՝ և հարկանէի, և սպանանէի զնա: *Զառիւծ 36 և զարջ սատակէր ծառայ քո. և եղիցի այլազգին անթլփատ իբրև զմի 'ի նոցանէն. և արդ ո՞չ երթայց՝ և սատակեցից զնա. և բարձից այսօր զնախատինս յիսրայէլէ. զի ո՞ ոք է այն անթլփատ՝ որ նախատեաց զբանակս Այ կենդանւոյ: *Եւ ասէ դաւիթ. 37 Տէր Այ՝ որ ապրեցոյց զիս 'ի ձեռաց առիւծուն, և 'ի ձեռաց արջոյն, նոյն ապրեցուսցէ զիս 'ի ձեռաց այլազգւոյն անթլփատին այնորիկ: և ասէ սաւուղ. երթ՝ և Տր եղիցի ընդ քեզ: *Եւ զգեցոյց սաւուղ դաւթի զվա- 38 ռապանակս իւր. և սաղաւարտ պղնձի 'ի գլուխ նորա: և ագոյց նմա զրահս: *Եւ էած դաւթի զսուսեր իւր 'ի վր 39 վառապանակացն: և գթեաց 'ի գնալն մի անգամ՝ և երկիցս. և ասէ դաւիթ ցսաւուղ. ո՛չ կարեմ՝ երթալ սոքօք՝ զի չեմ՝ հմուտ. և հանին զայն 'ի նմանէ: *Եւ էառ զցուպն իւր 'ի ձեռին իւր- 40 ում. և ընտրեաց իւր հինգ քարինս ողորկս 'ի հեղեղատէն. և եդ զնոսա 'ի հովուական մախաղին՝ յոր սովոր էր զքարն ժողովել. և զպարսն 'ի ձեռին իւրում: և մերձեցաւ առ այրն այլազգի: *Եւ գնայր և գայր այլազ- 41 գին՝ և մերձենայր առ դաւիթ. և այրն վահանակիր առաջի նորա: *Իբրև 42 հայեցաւ այլազգին՝ և ետես զդա- ւիթ, արհամարհեաց զնա. զի էր պատանեակ խարտեաշ՝ և աչօք գեղեցիկ: *Եւ ասէ այլազգին ցդաւիթ. զի- 43 մրդ. շո՞ւն իցեմ ես՝ զի ցպով և քարամբք գաս 'ի վր իմ: և ասէ դաւիթ. նաև վատթար ևս քան զշուն: և նզովեաց այլազգին զդաւիթ դիօքն

‖ Սերաք. 47. 3.

գէնք

44 իւրովք: *Եւ ասէ այլազգին ցդաւիթ. եկ առ իս՝ և տաց զմարմին քո թռչնոց երկնից՝ և գազանաց երկրի. 45 *Եւ ասէ դաւիթ ցայլազգին. դու գաս 'ի վր իմ սրով և գեղարդեամբ և ասպարաւ. և ես գամ՝ 'ի վերայ քո անուամբ Տն զօրութեց ճակատու 46 ի͞ղի՝ զոր նախատեցեր այսօր: *Եւ փակեսցէ զքեզ Տր այսօր 'ի ձեռս իմ. և սպանից զքեզ. և առից զգլուխ քո 'ի քէն: և տաց զզէշ քո. և զդիակունս բանակի այլազգեաց յաւուր յայսմիկ թռչնոց երկնից՝ և գազանաց երկրի. և ծանիցէ ամ երկիր՝ թէ գոյ Այ 47 'ի մէջ ի͞ղի: *Եւ ծանիցէ ամ եկեղեցիս այս. եթէ ո՛չ սրով և գեղարդեամբ փրկէ Տր. զի Տն է պատերազմ. և մատնեսցէ զձեզ Տր 'ի ձեռս 48 մեր: *Եւ յարեաւ այլազգին՝ և եկն՝ և մերձեցաւ ընդդէմ դաւթի: և աճապարեաց դաւիթ՝ և ընթացաւ 'ի ճակատն ընդդէմ այլազգւոյն:



49 *Եւ ձգեաց դաւիթ զձեռն իւր 'ի մախաղն. և էառ անտի քար մի. և պարսաքարեաց՝ և եհար զճակատ այլազգւոյն. և եմուտ քարն ընդ սաղաւարտն 'ի ճակատն. և անկաւ 'ի վերայ 50 երեսաց իւրոց յերկիր: *‖Եւ զօրացաւ

‖ Սերաք. 47. 4. 1. Մակ. 4. 30.

ցաւ դաւիթ քան զայլազգին պարսիւքն և քարիւ, և եհար զայլազգին՝ և սպան զնա. և սուր չէր 'ի ձեռին նորա. 51 *Եւ ընթացաւ դաւիթ՝ և հարաւ 'ի վերայ նորա. և էառ զնորին սուսեր. և մերկեաց զնա 'ի պատենից իւրոց՝ և սպան զնա. և եհատ զգլուխ նորա. իբրև տեսին այլազգիքն, եթէ մեռաւ զօրաւորն նոցա՝ փախեան. 52 *Եւ յարեան արք իսրայէլի և յուդայ. աղաղակեցին՝ և յարձակեցան զհետ նոցա մինչև 'ի մուտս գեթայ. և մինչև 'ի դրունս ասկաղոնի. և անկան վիրաւորք այլազգեացն զճանապարհայնն մինչև ցդրունս գեթայ՝ և ակկարոնի. 53 *Եւ դարձան արք իսրայէլի ասպատակեալքն զհետ այլազգեացն. և կոխեցին զբանակս նոցա. 54 *Եւ էառ դաւիթ զգլուխ այլազգւոյն. և եբեր զնա յերուսաղէմ. և զզէն նորա եդ 'ի վրանս իւրում. 55 *Եւ իբրև ետես սաւուղ զդաւիթ ելեալ ընդդէմ այլազգւոյն. ասէ ցաբեններ իշխան զօրուն. ո՞յր որդի է պատանեակդ այդ՝ աբեններ. և ասէ աբեններ. կենդանի է անձն քո արքայ՝ եթէ գիտիցեմ. 56 *Եւ ասէ արքայ. հարց՝ թէ ո՞յր որդի իցէ պատանեակդ. 57 *Եւ իբրև դարձաւ դաւիթ 'ի հարկանելոյ զայլազգին, էառ զնա աբեններ՝ և եած զնա առաջի սաւուղայ. և գլուխ այլազգւոյն 'ի ձեռին նորա. 58 *Եւ ասէ ցնա սաւուղ. ո՞յր որդի ես՝ մանուկ դու. և ասէ դաւիթ. որդի ծառայի քոյ յեսսեայ բեթղեհեմացւոյ.

## Գլ. ԺԸ.

1 Եւ եղև իբրև վախճանեաց զխօսելն ընդ սաւուղայ, և ոգի յովնաթանու կապեցաւ ընդ ոգւոյն դաւթի. և սիրեաց զնա յովնաթան ըստ անձին իւրում. 2 *Եւ էառ զնա սաւուղ առ իւր յաւուր յայնմիկ. և ոչ ետ նմա դառնալ 'ի տուն հօր իւրոյ. 3 *Եւ ուխտեաց ընդ նմա յովնաթան ուխտ՝ առ 'ի սիրել զնա ըստ անձին իւրում. 4 *Եւ մերկացաւ յովնաթան զլոդիկն՝ որ զիւրև՝ և ետ զայն դաւթի. և զվարապանակս իւր, մինչև ցսուսեր իւր. և ցաղեղն իւր. և ցկամար իւր. 5 *Եւ երթայր դաւիթ ամենայն ուրեք՝ ուր և առաքէր զնա սաւուղ. և իմաստնանայր. և կացոյց զնա սաւուղ 'ի վերայ արանց պատերազմի. և հաճոյ եղև առաջի աչաց ամենայն ժողովրդեանն. նաև առաջի աչաց ծառայից սաւուղայ. 6 *Եւ եղև 'ի մտանել նոցա՝ իբրև դարձաւ դաւիթ 'ի սպանանելոյ զայլազգին, ելին պարաւորք ընդ առաջ դաւթի յամենայն քաղաքացն իսրայէլի երգել՝ պար առնուլ ընդ առաջ սաւուղայ արքայի, թմբկօք՝ և ուրախութեամբ՝ և ծնծղայիւք. 7 *Եւ նուագէին կանայք խաղալիկք՝ և ասէին. ‖ եհար սաւուղ զհազարս՝ և դաւիթ զբիւրս. 8 *Եւ զչարեցաւ սաւուղ վասն բանին այնորիկ՝ և ասէ. դաւթի ետուն զբիւրս. և ինձ ետուն զհազարս. և արդ զինչ պակաս է նմա՝ բայց եթէ թագաւորութիւն. 9 *Եւ ընդ ակամբ հայէր սաւուղ յօրէ յայնմանէ՝ և առ յապայ. 10 *Եւ եղև 'ի վաղիւն անդր. և հարաւ այս չար յԱյ 'ի վերայ սաւուղայ. և մարգարէանայր 'ի մէջ տան իւրոյ. և դաւիթ երգէր ձեռամբ իւրով որպէս և հանապազ. և գեղարդն 'ի ձեռին սաւուղայ. 11 *Եւ ասէ հարից և կարեցից զդաւիթ գեղարդեամբս ընդ որմն. և ձգեաց սաւուղ. և խոյս ետ յերեսաց նորա դաւիթ երկիցս. 12 *Եւ երկեաւ սաւուղ յերեսաց դաւթի. զի Տէր էր ընդ նմա. և 'ի սաւուղայ վերացեալ էր. 13 *Եւ 'ի բաց արար զնա սաւուղ յիւրմէ. և կացոյց զնա իւր հազարապետ. և ելանէր և մտանէր առաջի ժողովրդեանն. 14 *Եւ էր դաւիթ խելամուտ յամենայն ճանապարհս իւր. և Տէր ընդ նմա. 15 *Եւ ետես սաւուղ թէ այնչափ իմաստուն է յոյժ. ակն ածէր յերեսաց նորա. 16 *Եւ ամենայն իսրայէլ և յուդայ սիրէր զդաւիթ. զի նա ելանէր և մտանէր առաջի երեսաց ժողովրդեանն. 17 *Եւ ասէ սաւուղ ցդաւիթ. ահա դուստր իմ երէց մերովբ՝ տաց զնա քեզ կնութեան. բայց լեր դու ինձ յորդի զօրութեան. և պատերազմեա՛ց զպատերազմունս Տեառն. քանզի ասաց սաւուղ՝ մի՛ եղիցի ձեռն իմ 'ի նա. այլ եղիցի 'ի նա ձեռն այլազգեացն. 18 *Եւ ասէ դաւիթ ցսաւուղ. ո՞վ եմ ես՝ և կամ կեանք ազգատոհմի հօր իմոյ 'ի մէջ իսրայէլի, զի լինիցիմ փեսայ արքայի. 19 *Եւ եղև 'ի ժամանակի տալոյ զմերովբ դուստր սաւուղայ՝ դաւթի, տուաւ նա ադրիէլի մօլաթացւոյ կնութեան. 20 *Եւ սիրեաց մեղքող դուստր սաւուղայ զդաւիթ. և ազդ եղև սաւուղայ. և հաճոյ թուեցաւ բանն յաչս նորա. 21 *Եւ ասէ սաւուղ՝ տաց զնա նմա կնութեան. և եղիցի նմա 'ի գայթագղութիւն. և էր 'ի վերայ սաւուղայ ձեռն այլազգեացն. և ասէ սաւուղ ցդաւիթ. երկոքումբք փեսայացիս դու ինձ այսօր. 22 *Եւ պատուիրեաց սաւուղ ծառայից իւրոց և ասէ. խօսեցարո՛ւք

‖ Սիր. 21. 11. Սիրաք. 47. 7.

դուք

զուք լաւելեայն ընդ դաւթի՝ և ասասցէք. ահա արքայ հաճեալ է ընդ քեզ. և ամ[ենայն] արք նորա սիրեն զքեզ։ և արդ փեսայացի՛ր դու արքայի։ 23 *Եւ խօսեցան ծառայքն սաւուղայ յականջս դաւթի ըստ ամենայն բանիցս այսոցիկ. և ասէ դաւիթ՝ թեթև իցէ յաչս ձեր փեսայանալ արքայի։ և ես այր մի տառապեալ եմ, և ոչ փառաւոր։ 24 *Եւ պատմեցին նմա ծառայքն իւր ըստ բանիցս այսոցիկ զոր խօսեցաւ դաւիթ։ 25 *Եւ ասէ սաւուղ. այսպէս ասասջի՛ք ցդաւիթ. եթէ ոչ կամի արքայ վարձանս. այլ հարիւր անթլփատութիւնս այլազգեաց՝ առնուլ վրէժ 'ի թշնամեաց արքայի. և սաւուղ խորհէր արկանել զնա 'ի ձեռս այլազգեացն։ 26 *Եւ պատմեցին դաւթի ծառայքն սաւուղայ զբանս զայսոսիկ. և հաճոյ թուեցաւ բանն յաչս դաւթի՝ փեսայանալ արքայի. և չէին լցեալ աւուրք։ 27 *Եւ յարեաւ դաւիթ և գնաց ինքն և արք իւր. և եհար յայլազգեացն արս հարիւր. և եբեր զանթլփատութիւնս նց. և ելից զնոսա առաջի արքայի. և փեսայացաւ արքայի. ‖ և ետ սաւուղ զմեղքող դուստր իւր նմա կնութ[իւն]։ 28 *Եւ եւես սաւուղ և ծանեաւ եթէ Տր է ընդ նմա. և ամ[ենայն] իսլ սիրէ զնա։ 29 *Եւ յաւել ես ակնածել 'ի դաւթէ. և եղև սաւուղ թշնամութբ ընդ դաւթի զամ աւուրս։ 30 *Եւ ելին իշխանք այլազգեացն. և եղեն 'ի բազում ժամանակաց ելք նց. և խելամուտ էր դաւիթ քան զամենայն ծառայսն սաւուղայ. և պատուեցաւ անուն նորա յոյժ։

‖ 2. Թագ. 3.14.

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ խօսեցաւ սաւուղ ընդ յովնաթանայ որդւոյ իւրում. և ընդ ամ ծառայս իւր սպանանել զդաւիթ։ 2 *Եւ յովնաթան որդի սաւուղայ հաճեալ էր ընդ դաւիթ յոյժ. և պատմեաց յովնաթան դաւթի և ասէ. հայր իմ խնդրէ սպանանել զքեզ. զգո՛յշ լեր վաղիւ ընդ առաւօտն։ և թաքի՛ր. և նստի՛ր 'ի թաքստեան։ 3 *Եւ ես ելից և կացից մօտ առ հօր իմում՝ յանդի, ուր և իցես դու. և ես խօսեցայց վն քո ընդ հօր իմում. և տեսից եթէ զինչ իցէ և պատմեցից քեզ։ 4 *Եւ խօսեցաւ յովնաթան վն դաւթի բանս բարիս ընդ սաւուղայ հօր իւրում. և ասէ ցնա. մի մեղիցէ արքայ 'ի ծառայ իւր դաւիթ, զի ոչինչ մեղաւ նա քեզ. և գործք նր բարութբ են առ քեզ յոյժ։ 5 *Եւ եդ զանձն իւր 'ի ձեռին իւրում, և եհար զայլազգին. և արար Տր փրկութի մեծ. և ամ իսլ տեսին և ուրախ եղեն. և ընդէր մեղանչիցես յարիւն արդար՝ սպանանել զդաւիթ տարապարտուց։ 6 *Եւ լուաւ սաւուղ ձայնի յովնաթանու. և երդուաւ սաւուղ և ասէ. կենդանի է Տր եթէ մեռանիցի։ 7 *Եւ կոչեաց յովնաթան զդաւիթ. և պատմեաց նմա յովնաթան զամ բանս զայսոսիկ. և տարաւ յովնաթան զդաւիթ առ սաւուղ. և էր առաջի նորա իբրև յերէկն և յեռանդ։ 8 *Եւ յաւել ևս լինել պատերազմ. և զօրացաւ դաւիթ տալ պատերազմ ընդ այլազգիսն. և եհար 'ի հարուածս մեծամեծս 'ի նոցանէ յոյժ. և փախեան յերեսաց նր։



9 *Եւ եղև այս չար 'ի Տէ 'ի վերայ սաւուղայ. և նստէր 'ի տան և գեղարդն 'ի ձեռին նր. և դաւիթ երգէր ձեռօք իւրովք։ 10 *Եւ խնդրէր սաւուղ հարկանել զգեղարդն ընդ դաւիթ և ընդ որմն. և խուսեաց յերեսաց սաւուղայ. և եհար զգեղարդն յորմն. և դաւիթ ել գնաց և զերծաւ։ 11 *Եւ եղև 'ի գիշերին յայնմիկ առաքեաց սաւուղ հրեշտակս 'ի տուն դաւթի պահել զնա. զի սպանցէ զնա ընդ առաւօտն. և պատմեաց դաւթի մեղքող կին իւր՝ և ասէ. եթէ ոչ ապրեցուցես զանձն քո 'ի գիշերիս յայսմիկ՝ վաղիւ մեռանելոցես։ 12 *Եւ իջոյց մեղ

Սեր. 10.12.

մեղքող զդաւիթ ընդ պատուհանն, և փախեաւ. գնաց և ապրեցաւ։ 13 *Եւ էառ մեղքող պաճուճապատանս՝ և եդ ՚ի մահճին. և լեարդ այծեաց, և կծիկ մազոյ եդ ՚ի սնարսն. և ծածկեաց զնա հանդերձիւ։ 14 *Եւ առաքեաց հրեշտակս սաւուղ ունել զդաւիթ. և ասեն խօթ է։ 15 *Եւ առաքեաց ՚ի մջ դաւթի դարձեալ և ասէ. հանէք զնա մահճօքն առ իս՝ և սպանից զնա։ 16 *Եւ եկին հրեշտակքն. և ահա պաճուճապատանք ՚ի վերայ մահճացն. և լեարդ այծեաց՝ և կծիկ մազոյ ՚ի սնարսն։ 17 *Եւ ասէ սաւուղ ցմեղքող՝ ընդէ՞ր այսպէս խաբեցեր զիս. և արձակեցեր զթշնամին իմ, և ապրեցաւ. և ասէ մեղքող ցսաւուղ. ինքն ասաց թէ արձակեա՛ զիս. ապա թէ ոչ, սպանանեմ զքեզ։ 18 *Եւ դաւիթ փախեաւ և ապրեցաւ. և եկն առ սամուէլ յարիմաթեմ. և պատմեաց նմա զամ ինչ զոր արար նմա սաւուղ. և գնացին սամուէլ և դաւիթ՝ և նստան ՚ի նաւաթ հռամայ։ 19 *Պատմեցաւ սաւուղայ և ասեն. ահա դաւիթ ՚ի նաւաթ հռամայ է։ 20 *Եւ առաքեաց սաւուղ հրեշտակս ունել զդաւիթ. և տեսին զեկեղեցին մարգարէից մարգարէացելոց. և սամուէլ կայր ՚ի մջ նոցա. և եղև ՚ի վերայ հրեշտակացն սաւուղայ հոգի Այ, և մարգարէացան և նոքա։ 21 *Եւ պատմեցաւ սաւուղայ. և յաւել սաւուղ առաքել այլ հրեշտակս. և մարգարէացան և նք. և յաւել սաւուղ առաքել այլ հրեշտակս, և մարգարէացան և նոքա։ 22 *Եւ բարկացաւ սրտմտութբ սաւուղ. և գնաց ինքն յարիմաթեմ. և եկն մինչև ՚ի ջրհորն մեծ՝ որ ՚ի սեկքոլ. և եհարց և ասէ. ո՞ւր է սամուէլ և դաւիթ. և ասեն՝ ՚ի նաւաթ հռամայ է։ 23 *Եւ գնաց անտի ՚ի նաւաթ հռամայ. և եղև ՚ի վերայ նորա հոգի Այ. և երթայր երթալով և մարգարէանայր. մինչև հասանիլ նմա ՚ի նաւաթ հռամայ։ 24 *Եւ մերկացաւ զհանդերձ իւր ինքնին, և մարգարէացաւ առաջի նոցա. և անկաւ մերկ զտիւն ողջոյն. և զգիշերն ամենայն. ‖Վասն այնորիկ ասէին՝ թէ և սաւուղ ՚ի մարգարէս։

‖ Ա Էր. 10.12.

## ԳԼ: Ի:

1 Եւ փախեաւ դաւիթ ՚ի նաւաթայ հռամայ. և եկն խօսեցաւ առաջի յովնաթանայ և ասէ. զի՞նչ արարի և զի՞նչ վնաս է իմ. և զի՞նչ մեղայ առաջի հօր քոյ՝ զի խնդրէ զանձն իմ։ 2 *Եւ ասէ ցնա յովնաթան. քաւ քեզ՝ ոչ մեռանիցիս. զի ահա ոչ առնէ հայր իմ բան մի մեծ կամ փոքր՝ զոր ոչ յայտնէ յունկն իմ. և զիա՞րդ իցէ զի թաքուցանիցէ հայր իմ յինէն զբանդ զայդ. չէ այդպէս։ 3 *Պատասխանի ետ դաւիթ՝ և ասէ ցյովնաթան. գիտելով գիտէ հայր քո՝ զի գտի շնորհս առաջի աչաց քոց. և ասէ թէ մի՛ գիտասցէ յովնաթան՝ գուցէ ոչ կամիցի. այլ կենդանի է Տր, և կենդանի է անձն քո. զի որպէս ասացի՝ վճարեալ է ընդ իս և ընդ հայր քո մինչև ցմահ։ 4 *Եւ ասէ յովնաթան ցդաւիթ. զի՞նչ ցանկայ անձն քո՝ և արարից քեզ։ 5 *Ասէ դաւիթ ցյովնաթան. ահա վաղիւ ամսամուտ է. և ես նստելով ո՛չ նստայց ուտել զհաց ընդ արքայի. և առաքեսցես զիս՝ և թաքեայց ՚ի դաշտի աստ մինչև ցընդերեկս աւուրն երրորդի։ 6 *Եւ թէ առնելով առնիցէ այց զինէն հայր քո՝ ասասցես՝ եթէ հրաժարելով հրաժարեցաւ յինէն դաւիթ երթալ մինչև ցբեթղեհեմ քաղաք իւր. զի զոհ աւուրց է անդ՝ ամ ցեղին։ 7 *Եւ թէ ասասցէ թէ բարւոք է՝ խաղաղութի է ծառայի քում։ Ապա թէ խստիւ տացէ պատասխանի՝ գիտասջիր՝ զի վճարեալ է չարութի առ ՚ի նմանէ։ 8 *Եւ արասցես ողորմութի ընդ ծառայի քում. զի յուխտ Տն մուծեր զծառայ քո ընդ քեզ. և եթէ վնաս ինչ է ՚ի ծառայի քում, դու իսկ սպան զիս. և ընդէ՞ր հասուցանիցես զիս առ հայր քո։ 9 *Եւ ասէ յովնաթան. քաւ լիցի քեզ. զի եթէ գիտելով գիտասցիս եթէ վճարեալ է չարութի առ ՚ի հօրէ իմմէ գալ ՚ի մջ քո. եթէ ոչ ՚ի քաղաքսն իսկ քո պատմեցից քեզ։ 10 *Եւ ասէ դաւիթ ցյովնաթան՝ ո՛ պատմեսցէ ինձ եթէ խստիւ պատասխանի տացէ քեզ հայր քո։ 11 *Եւ ասէ յովնաթան ցդաւիթ. երթ՝ և մնա՛ յանդին. և գնացին երկոքեան յանդն։ 12 *Եւ ասէ յովնաթան ցդաւիթ. Տր Ած Իէլի գիտէ՝ եթէ ոչ քննեցից զհայր իմ զերեք ժամանս՝ և եթէ բարի ինչ իցէ զդաւթէ և եթէ չար՝ առաքեցից առ քեզ յանդս։ 13 *Օն և օն արասցէ Տր յովնաթանու, և օն և օն յաւելցէ. եթէ ոչ քննեցից զչարութին վասն քո. և յայտնեցից յունկն քո. և արձակեցից զքեզ՝ և երթիցես ՚ի խաղաղութի. և եղիցի Տր ընդ քեզ՝ որպէս էր ընդ հօր իմում։ 14 *Եւ իցէ թէ մինչդեռ ես կենդանի իցեմ, արասցես ընդ իս իսկ ողորմութիւն՝ և եթէ մահու մեռանիցիմ։ 15 *Մի՛ բարձ

ցես

ցես զողորմութիւն քո 'ի տանէ իմմէ մինչև յյաւիտեան. և եթէ ոչ՝ 'ի ջնջել Տն զթշնամիս դաւթի զիւրաքանչիւրոք յերեսաց երկրի : 16 * Գտցի անուն յովնաթանու 'ի տան դաւթի. խնդրեսցէ Տէր 'ի ձեռաց թշնամեաց դաւթի : 17 * Եւ յաւել յովնաթան երդմնեցուցանել զդաւիթ առ սէր նորա՝ զի սիրեաց զանձն սիրելւոյն իւրոյ : 18 * Եւ ասէ ցնա յովնաթան. վաղիւ ամսամուտ է. և խնդրեսցիս : 19 * Քան զի խնդրեսցի աթոռ քո. և երեքօրեսցիս. և խնդրեսցիս. և եկեսցես 'ի տեղի քո՝ ուր թաքեարն յաւուրն գործոյ. և նստցիս առ երգաբաւդ այդուրիկ : 20 * Եւ ես երեքկնեցից փքնօք՝ յորսածել և ձգել յամատարայն : 21 * Եւ արձակեցից զպատանեակն՝ և ասացից. երթ՝ և գտ զփքինն. և եթէ ասելով ասացից ցպատանեակն. 'ի քէն և այսր է փքինն. և այսր առ զնա, եկեսջիր. զի խաղաղութիւն է քեզ. և չէն ինչ բանք : կենդանի է Տր : 22 * Ապա թէ ասացից ցպատանին. 'ի քէն և անդր է փքինն, գնասջիր՝ զի արձակեաց զքեզ Տր : 23 * Եւ բանից՝ զոր խօսեցաք ես և դու՝ ահա Տր լիցի վկայ՝ ընդ իս և ընդ քեզ մինչև յյաւիտեան : 24 * Եւ թաքեաւ դաւիթ յանդին. և եհաս ամսամուտն. և եմուտ արքայ 'ի սեղանակն ուտել զհաց : 25 * Եւ նստաւ արքայ յաթոռ իւրում որպէս միանգամ և միւսանգամ աթոռոյ յորմայեցն՝ և ժամանեաց յովնաթան. և նստաւ աբեններ 'ի կողմանէ սաւուղայ. և խնդրեցաւ տեղին դաւթի : 26 * Եւ ոչ խօսեցաւ սաւուղ և ոչ ինչ յաւուր յայնմիկ՝ քանզի ասաց՝ թէ դէպք ինչ իցեն չլինելոյ սուրբ՝ և չիցէ սրբեալ : 27 * Եւ եղև 'ի վաղիւ ամսամտին յաւուրն երկրորդի՝ խնդրեցաւ տեղին դաւթի. և ասէ սաւուղ ցյովնաթան ցորդի իւր. զի՞ է զի ոչ եկն որդին յեսսեայ երէկ և այսօր 'ի սեղանս : 28 * Պատասխանի ետ յովնաթան՝ և ասէ ցսաւուղ. հրաժարեցաւ յինէն երթալ 'ի բեթղեհէմ քաղաք իւր : 29 * Ասէ՝ արձակեա զիս՝ զի զոհ է ցեղին մերոյ 'ի քաղաքին. և պատուիրեցին յիս եղբարք իմ. և արդ եթէ գտի շնորհս առաջի աչաց քոց՝ երթայց՝ և տեսից զեղբարս իմ : վն այնորիկ ոչ եկն 'ի սեղան արքայի : 30 * Եւ բարկացաւ սաւուղ 'ի վն յովնաթանու՝ և ասէ ցնա՝ աղջկորդի անձնամատն. ես ո՞չ գիտեմ, զի դաշնաւոր ես դու որդւոյն յեսսեայ՝ յամօթ քո և յամօթ առականաց մօր 31 քոյ : * Զի զամ աւուրս որչափ որդին յեսսեայ կենդանի է՝ ոչ հաստատեսցի թագաւորութիւն քո. արդ առաքեա կալ զպատանին՝ զի որդի մահու է նա : 32 * Պատասխանի ետ յովնաթան սաւուղայ հօր իւրում, և ասէ ցնա. ընդէ՞ր մեռանիցի. զի՞նչ գործեաց : 33 * Եւ մերացոյց սաւուղ զգեղարդն 'ի վն յովնաթանու սպանանել զնա. և գիտաց յովնաթան՝ թէ վճարեալ է չարութիւն 'ի հօրէ նր՝ սպանանել զդաւիթ : 34 * Եւ դիմեաց յովնաթան 'ի սեղանոյ անտի արտաքս բարկութբ և սրտմտութբ. և ո՛չ եկեր յաւուրն երկրորդի ամսոյն հաց. զի բեկաւ վն դաւթի. զի վճարեաց վն նորա հայրն իւր : 35 * Եւ եղև ընդ առաւօտն ել յովնաթան յանդն, որպ ժամադիր եղև դաւթի 'ի վկայութն. 36 և մանուկ փոքրիկ ընդ նմա : * Եւ ասէ ցպատանեակն. ընթա՛, գտ զփքինն զոր ձգեցից. և ընթացաւ պատանեակն. և նա ձգեաց զփքինն և եբեր զնա : 37 * Եւ չոգաւ պատանեակն մինչև ցտեղի փքնին զոր ձգեաց յովնաթան. աղաղակեաց յովնաթան զկնի պատանեկին և ասէ. 'ի քէն և անդր է փքինն. 38 * Եւ աղաղակեաց յովնաթան զկնի պատանեկին և ասէ. փութացեալ արագեա՛ և մի՛ կայցես. և քաղեաց մանուկն յովնաթանու զփքինսն և եբեր առ տէր իւր : 39 * Եւ պատանեակն ո՛չ ինչ գիտէր՝ բայց 'ի յովնաթանայ և 'ի դաւթէ՝ զի գիտէին զբանն : 40 * Եւ ետ յովնաթան զգործին իւր ցպատանեակն, և ասէ ցպատանեակն իւր, երթ մուտ 'ի քաղաքն : 41 * Եւ եմուտ պատանեակն. և յարեաւ դաւիթ յարգաբայն և անկաւ 'ի վն երեսաց իւրոց յերկիր և երկիր եպագ նմա երիցս անգամ. և համբուրեաց իւրաքանչիւր զընկեր իւր. և ելաց իւրաքանչիւր 'ի վն ընկերի իւրոյ մինչև ցմեծ վախճանն : 42 * Եւ ասէ յովնաթան ցդաւիթ՝ երթ 'ի խաղաղութն. և որպ երդուաք մեք երկոքեին յանուն Տն և խօսեցաք՝ Տր լիցի վկայ ընդ իս և ընդ քեզ. և 'ի մէջ զաւակի իմոյ և 'ի մէջ զաւակի 43 քոյ մինչև յյաւիտեան : * Եւ յարեաւ դաւիթ և գնաց. և յովնաթան եմուտ 'ի քաղաքն :

## ԳԼ : ԻԱ.

1 Եւ եկն դաւիթ 'ի նոմբա՝ առ աքիմելէք քահանայ. և զարհուրեցաւ աքիմելէք 'ի պատահել նր. և ասէ ցնա. զի՞ է՝ զի դու միայն ես՝ և ոչոք 2 է ընդ քեզ : * Եւ ասէ դաւիթ ցաքիմէ-

քիմէ-

քիմելէք քահանայ Ա͞Յ․ բան ինչ հրամայեալ է ինձ արքայի այսօր․ և ասէ ցիս՝ մի՛ ոք գիտասցէ զբանն վասն որոյ առաքեցի զքեզ․ և վ͞ս որոյ պատուիրեցի քեզ․ և հրաման ետու մանկտւոյն 'ի տեղւոջն որ կոչի Ա͞Յ հաւատարմութի․ փեղմոնի ելմոնի ։ 3 * Եւ արդ՝ եթէ իցեն 'ի ձեռին քում հինգ նկանակ հացի, տո՛ւր 'ի պէտս իմ․ թէ որչափ և գտանիցի ։ 4 * Պատասխանի ետ քահանայն և ասէ ցԴաւիթ․ ո՛չ կայ հաց պիղծ ընդ ձեռամբ իմով․ այլ հաց սրբութե․ և եթէ իցեն զգուշացեալ մանկտին 'ի կանանց, կերիցեն ։ 5 * Պատասխանի ետ Դաւիթ քահանային՝ և ասէ ցնա․ 'ի կանանց մեկուսի եմք յերէկն և յեռանդն՝ յելանել ինձ 'ի ճանապարհս սրբեցան և մանկտին․ զի և ճանապարհս խնկ պիղծ է․ և վ͞ս այնորիկ այսօր սրբեսցի գործովս իմով ։ 6 * ‖ Եւ ետ նմա աքիմելէք քահանայ 'ի զառաջաւոր հացէն․ զի ոչ գոյր անդ հաց․ բայց 'ի հացէն երեսաց՝ առեալ յերեսաց Տ͞ն․ դնել առաջի հաց ջերմ․ յաւուրն յորում էառ զայն ։ 7 * Եւ անդ էր մի 'ի ծառայից սաւուղայ յաւուր յայնմիկ նեղեալ նեսարաւ առաջի Տ͞ն․ և անուն ն͞ր դովեկ ասորի․ արածէր զջորիս սաւուղայ ։ 8 * Եւ ասէ Դաւիթ ցաքիմելէք, եթէ իցէ աստ ընդ ձեռամբ քով գեղարդն կամ սուսեր․ զի զսուսեր իմ և զկազմած իմ ո՛չ առի 'ի ձեռին իմում․ քանզի բանն արքայի տագնապեաց զիս ։ 9 * Եւ ասէ քահանայն․ ահա սուսերն գողիաթու այլազգւոյ փղշտացւոյ՝ զոր սպաներ 'ի հովիտն ելայ․ և այն պատեալ կայ ձորձով յետոյ վակասին․ եթէ զայն առնուս ընդ քեզ՝ առ․ զի ոչ գոյ աստ բայց յայնմանէ․ և ասէ Դաւիթ, չիք իբրև զնա․ տո՛ւր ցիս զայն․ և ետ նմա զայն ։ 10 * Եւ յարեաւ Դաւիթ և փախեաւ յաւուր յայնմիկ յերեսաց սաւուղայ․ և եկն Դաւիթ առ անքուս արքայ գեթայ ։ 11 * Եւ ասեն ծառայքն անքուսայ ցնա․ ո՞չ սա է Դաւիթ՝ թագաւոր երկրին․ ո՞չ սմա նուագէին պարաւորքն․ և ասէին․ եհար սաւուղ զհազարս․ և Դաւիթ զբիւրս ։ 12 * Եւ եդ Դաւիթ զբանսն 'ի սրտի իւրում․ և երկեաւ յոյժ յերեսաց անքուսայ արքայի գեթայ ։ 13 * Եւ այլակերպեաց առաջի նորա զերեսս իւր․ և պատճառեցաւ յաւուր յայնմիկ․ և կաքաւէր առ դուրս քաղաքին․ և ծորեցուցանէր զլորձունս իւր 'ի վերայ մօրուաց իւրոց․ և յափխթերս խաղայր ։ 14 * Եւ ասէ անքուս ցծառայս իւր․ ահա տեսէք զայրն այսահար՝ ընդէ՞ր մուծիք զնա առ իս ։ 15 * Մի՞ թէ կարօտ ինչ իցեմ ես այսահարօք․ զի ածիք զդա այսահարել առաջի իմ․ մի՛ մտցէ դա 'ի տուն ։

‖ Մատ․ 12․ 3․ և 4․

## ԳԼ: ԻԲ.

1 Գնաց անտի Դաւիթ՝ և եկն՝ զերծաւ ոդողոմայ այրն․ լուան եղբարք նորա և ա͞մ տուն հօր նորա․ և իջին առ նա անդր ։ 2 * Եւ ժողովեցին առ նա ա͞մ վշտատեսք․ և ամենայն պարտապանք․ և ա͞մ ցաւագնեալք ոգւովք․ և էր նոցա զօրագլուխ․ և էին ընդ նմա իբրև արք չորեքհարիւր ։ 3 * Եւ գնաց անտի Դաւիթ 'ի մասեփաթ մովաբայ․ և ասէ ցարքայն մովաբայ․ եղիցի հայր իմ և մայր իմ առ քեզ․ մինչև գիտացից թէ զինչ արասցէ ինձ Ա͞Ծ ։ 4 * Եւ աղաչեաց զերեսս արքային մովաբայ․ և բնակեցան առ նմա զա͞մ աւուրս մինչև էր Դաւիթ յամրոցին ։ 5 * Եւ ասէ գադ մարգարէ ցԴաւիթ․ մի՛ նստիր յամրոցիդ․ այլ արի՛, և երթիցես յերկիրն յուդայ․ գնաց Դաւիթ և եկն նստաւ 'ի քաղաքին սարիթ ։ 6 * Եւ լուաւ սաւուղ եթէ յայտնեցաւ Դաւիթ՝ և արքն որք ընդ նմա․ և սաւուղ նստէր 'ի բլրին 'ի ներքոյ հերկին որ 'ի ռամա․ և գեղարդն 'ի ձեռին իւրում․ և ա͞մ ծառայք նորա կային շուրջ զնովաւ ։ 7 * Եւ խօսեցաւ սաւուղ ընդ ծառայսն իւր՝ որք կային շուրջ զնովաւ․ և ասէ ցնոսա․ լուարո՛ւք որդիք բենիամենի՝ թէ արդարև ամենեցուն ձեզ տայցէ որդին յեսսեայ անդս և այգեստանս․ և զամենեսեան զձեզ առնիցէ հազարապետս և հարիւրապետս ։ 8 * Զի միաբանեալ կայք 'ի վերայ իմ դուք ամենեքեան․ և ոչ ոք էր որ յայտնէր յունկն իմ՝ 'ի դնել որդւոյն իմոյ ուխտ ը͞ն որդւոյն յեսսեայ ։ և չիք ոք 'ի ձէնջ որում ցաւէր վասն իմ, և յայտնէր յունկն իմ․ զի յարոյց որդի իմ զծառայ իմ 'ի վերայ իմ թշնամի․ որպէս յաւուր յայսմիկ ։ 9 * Պատասխանի ետ դովեկ ասորի․ որ կայր 'ի վ͞ր ջորւոց սաւուղայ․ և ասէ ։ տեսի զորդին յեսսեայ եկեալ 'ի նոմբա առ աքիմելէք 10 որդի աքիտովբայ քահանայ ։ * Եւ հարցանէր նա նմա 'ի Տ͞է․ և ետ նմա պաշար․ և զսուսերն գողիաթու այլազգւոյ ետ նմա ։ 11 * Եւ առաքեաց արքայ․ և կոչեաց զաքիմելէք որդի աքիտովբայ զքահանայ․ և զա͞մ որդիս հօր ն͞ր զքահանայս․ որք էին 'ի նոմբա․ և եկին ամենեքին առ արքայ ։

'ի յանձաւն ոդողոմայ

12 * Եւ ասէ սաւուղ. լուր որդի աքիտովբայ. և ասէ աւասիկ կամ՝ խօսեա՛ց տէր: 13 * Եւ ասէ ցնա սաւուղ. զի՞ է զի միաբանեցայք դուք և որդին յեսսեայ՝ հակառակ ինձ. տալ նմա հաց և սուսեր. և հարցանել նմա 'ի Տէ. և դնել զնա ինձ թշնամի. որպէս և յաւուր յայսմիկ: 14 * Պատասխանի ետ աքիմելէք արքային և ասէ. և ո՞վ է յամենայն ծառայս քո հաւատարիմ իբրև զդաւիթ. և փեսայ արքային. և իշխան ամ հրամանի քոյ. և փառաւոր 'ի տան քում: 15 * Եթէ այսր աւուր ինչ սկսեալ իցեմ հարցանել նմա յԱյ. քա՛ւ մի՛ երբեք դիցէ արքայ 'ի վերայ ծառայի իւրոյ այդպիսի բան. և 'ի վ̃ր տան հօր իմոյ. զի ոչ գիտէ ծառայ քո յամենայնի յայդմիկ բան մի՛ մեծ կամ փոքր: 16 * Եւ ասէ արքայ սաւուղ. մահու մեռցիս աքիմելէք՝ դու և ամ տուն հօր քո: 17 * Եւ ասէ արքայ ցսուրհանդակն որք կային շուրջ զնովաւ. մատիք և սպանէք զքահանայսն Տն. զի ձեռն նոցա ընդ դաւթիւ է. զի գիտացին եթէ փախչի նա՝ և ոչ յայտնեցին յունկն իմ. և ոչ կամեցան ծառայքն արքային արկանել զձեռս իւրեանց. և մեղանչել 'ի քահանայսն Տն: 18 * Եւ ասէ արքայ ցդովէկ. դարձի՛ր դու՝ և պատահեա՛ց քահանայիցն. և դարձաւ դովէկ ասորի. և կոտորեաց զքահանայսն Տն. և սպան յաւուր յայնմիկ երեքհարիւր և հինգ այր. զամենեսին որք կրէին զեփուտն կտաւի: 19 * Եւ զնոմբա քաղաք քահանայիցն եհար սրով սուսերի յառնէ մինչև ցկին. 'ի տղայոյ մինչև ցստնդիաց. յարջառոյ և յիշոյ մինչև ցոչխար՝ բերանով սրոյ: 20 * Եւ ապրեցաւ որդի մի աքիմելէքայ. որդւոյ աքիտովբայ. և անուն նորա աբիաթար. և փախեաւ զհետ դաւթի: 21 * Եւ պատմեաց աբիաթար դաւթի եթէ կոտորեաց սաւուղ զամենայն քահանայսն Տն: 22 * Եւ ասէ դաւիթ ցաբիաթար՝ գիտէի յաւուր յայնմիկ. եթէ դովէկ ասորի պատմէ սաւուղայ. ես եմ պարտական ոգւոց տան հօր քո: 23 * Նիստ առ իս. մի՛ երկնչիր. զի ուր խնդրեցից անձին իմոյ տեղի, խնդրեցից և քում անձին. զի պահեսցիս դու առ իս:

ութսուն և հինգ

## ԳԼ: ԻԳ:

Եւ ազդ եղև դաւթի. և ասեն. 1 ահա այլազգիք պատերազմին ընդ կէիլա. և յափշտակեցին զկալ-ոցայն: 2 * Եւ եհարց դաւիթ 'ի Տէ և ասէ. եթէ երթա՞յց. և հարկանիցեմ զայլազգիսն զայնոսիկ. և ասէ Տէր ցդաւիթ. երթ. և հարցես զայլազգիսն. և փրկեսցես զկէիլա: 3 * Եւ ասեն արք դաւթի ցնա՝ ահա մեք աստէն 'ի հրէաստանի յերկիւղի եմք. և զի՞արդ լինիցի եթէ երթիցեմք 'ի կէիլա յաւար այլազգեացն: 4 * Եւ յաւել միւսանգամ դաւիթ հարցանել 'ի Տէ. և պատասխանի ետ նմա Տէր՝ և ասէ ցնա. արի՛ էջ 'ի կէիլա՝ զի ես մատնեցից զայլազգիսն 'ի ձեռս քո: 5 * Եւ գնաց դաւիթ և արքն որք ընդ նմա 'ի կէիլա. և մարտեաւ ընդ այլազգիսն. և փախեան յերեսաց նորա. և էառ զանասուն նոցա. և եհար 'ի նոցանէ հարուածս մեծամեծս. և փրկեաց դաւիթ զբնակիչսն կէիլայ: 6 * Եւ եղև 'ի փախչելն աբիաթարայ որդւոյ աքիմելէքայ առ դաւիթ. և ինքն ընդ դաւթի էջ 'ի կէիլա. և ունէր զեփուտն 'ի ձեռին իւրում: 7 * Եւ ազդ եղև սաւուղայ. եթէ եկն դաւիթ 'ի կէիլա. և ասէ սաւուղ. վաճառեաց զնա Ած 'ի ձեռս իմ. զի փակեցաւ մտեալ 'ի քաղաք դրանց և դռնափակաց: 8 * Եւ հրաման ետ սաւուղ ամ ժողովրդեանն իջանել 'ի պատերազմ 'ի կէիլայ. ունել զդաւիթ և զարս նորա: 9 * Եւ գիտաց դաւիթ զսաւուղայ եթէ ոչ դադարի 'ի չարութենէ. և ասէ դաւիթ ցաբիաթար քահանայ. մատո՛ զեփուտ Տն: 10 * Եւ ասէ դաւիթ. Տր Ած Իղի լսելով լուաւ ծառայ քո՝ եթէ խնդրէ սաւուղ գալ 'ի վերայ կէիլայ. ապականել զքաղաքս վասն իմ: 11 * Եթէ պաշարեսցի. և եթէ իջանիցէ այժմ այսր սաւուղ՝ որպէս լուաւ ծառայ քո: Տր Ած Իղի պատմեա՛ ծառայի քում. 12 և ասէ Տր՝ պաշարեսցի: * Եւ ասէ դաւիթ. եթէ մատնեսցեն զիս կէիլայիքս, և զարս իմ 'ի ձեռս սաւուղայ. 13 և ասէ Տր. մատնեսցեն: * Եւ յարեաւ դաւիթ, և արքն որք էին նմա իբրև չորեքհարիւր. ելին 'ի կէիլայ. և գնացին յո և գնային. և ազդ եղև սաւուղայ եթէ զերծաւ դաւիթ 'ի կէիլայ. և դադարեաց յելանելոյ: 14 * Եւ նստաւ դաւիթ յանապատին 'ի մասերեթ յանձուկսն. և նստէր 'ի լերին անապատին զիփայ 'ի մաւալլերինն 'ի մթին երկրին. և խնդրէր զնա սաւուղ զամ աւուրս. և ոչ մատնեաց 15 զնա Տր 'ի ձեռս նր: * Եւ ետես դաւիթ եթէ ելանէ սաւուղ խնդրել զդաւիթ. և դաւիթ նստէր յանապատին 'ի մաւալլերինն զիփայ նորում:

* Եւ

16 * Եւ յարեաւ յովնաթան որդի սաւ_
ուղայ. և չոգաւ առ դաւիթ 'ի Նորն.
և հաստատեաց զձեռս իւր 'ի Տէր:
17 * Եւ ասէ ցնա՝ մի երկնչիր. զի ոչ
գտցէ զքեզ ձեռն սաւուղայ հօր իմոյ.
և դու թագաւորեսցես 'ի վերայ իՂի.
և ես եղէց քո երկրորդ. և սաւուղ
հայր իմ գիտէ թէ այդպէս է: 18 * Եւ
ուխտեցին ուխտ երկոքեան առաջի
Տն. և նստէր դաւիթ 'ի Նորումն. յով_
նաթան գնաց 'ի տուն իւր: 19 * || Եւ
ելին զիփացիքն 'ի մռայլ երկրէն առ
սաւուղ 'ի բլուրն. և ասեն. ոչ աւա_
նիկ դաւիթ թաքուցեալ է առ մեզ
'ի մասերա՝ յանձուկս նորոյն 'ի բլուրն
եքեղատու. ընդ աջմէ յեսեմոնայ:

|| Սաղ. 26.Ա.

20 * Եւ արդ ըստ ամենայն ցանկութեան
անձին արքայի իջցէ իջանելով առ
մեզ. քանզի փակեսցուք զնա 'ի ձեռս
արքայի: 21 * Եւ ասէ ցնոսա սաւուղ. օրհ
նեալ էք դուք 'ի Տէ. զի ցաւեաց ձեզ
վասն իմ: 22 * Արդ երթայք և այլ ևս
կազմեցարուք. և դիտեցէք և տեսէք
զտեղին ուր իցէ ոտն նորա. հասէք
վաղվաղակի անդր. ուր ասացիքն
թէ է. գուցէ խորամանկիցէ: 23 * Եւ
քննեսջիք և տեսջիք յամ տեղեաց ուր
թաքուցեալ իցէ. և դարձջիք առ իս
պատրաստութք. և երթիցուք ընդ
ձեզ: և եղիցի եթէ իցէ յերկրին, խու
զեցից զնա ամենայն հազարաւորօք
յուդայ: 24 * Եւ յարեան և գնացին զի_
փացիքն յերեսաց սաւուղայ. և դաւ
իթ և արք նորա էին յանապատին մա
ոնայ առ երեկս ընդ աջմէ յեսեմո_
նայ: 25 * Եւ գնաց սաւուղ և արք իւր
խնդրել զդաւիթ: և ազդ արարին
դաւթի. և էջ 'ի վէմն որ յանապա_
տին մաոնայ: և լուաւ սաւուղ՝ և պն
դեցաւ զհետ դաւթի յանապատն մաո
նայ: 26 * Երթայր սաւուղ և արք իւր
զայս կողմն լերինն. և դաւիթ և արք
իւր առ 'ի կողմն զայն կողմն լերինն:
և եղև դաւթի թաքստեամբ երթալ
յերեսաց սաւուղայ: և սաւուղ և արք
նր պատեցան զդաւթիւ և զարամբք
նր ունել զնս: 27 * Եւ եկն հրեշտակ առ
սաւուղ և ասէ. փութա՛ եկ այսր. զի
արշաւեցին այլազգիք յերկիրս: 28 * Եւ
դարձաւ սաւուղ չպնդել զհետ դաւ
թի: և չոգաւ ընդդէմ այլազգեացն.
վասն այնորիկ կոչեցաւ տեղին այն
վէմ բաժանեալ:

## ԳԼ: ԻԳ:

1 Եւ յարեաւ դաւիթ անտի և նս_
տաւ յանձուկս գադդայ: 2 * Եւ
եղև իբրև դարձաւ սաւուղ յայլազ
դեացն. ազդ եղև նմա և ասեն. ահա_
ւանիկ դաւիթ յանապատին գադդայ
է: 3 * Եւ էառ ընդ իւր երիս հազարս
արանց ընտրելոց յամ իՂէ. և գնաց
խնդրել զդաւիթ և զարս նր. հան_
դէպ էլիմաց որսոյն եղջերուաց.
4 * Եւ եկն 'ի պառակս հօտիցն որ առ
ճանապարհաւն. և անդ էր այր մի:
և եմուտ սաւուղ հանգչել: և դաւիթ
և արքն նր նստէին 'ի ներքնումն այրին:
5 * Եւ ասեն արքն դաւթի ցնա. ահա
այս օր է, զորմէ ասաց Տր ցքեզ, մատ
նել զթշնամի քո 'ի ձեռս քո. և արաս
ցես ընդ նմա՝ որպէս հաճոյ թուիցի յաչս
քո: և յարեաւ դաւիթ և եհատ զտը
տուն լօդկին սաւուղայ գաղտ:
6 * Եւ եղև յետ այնորիկ՝ զղջացոյց
զդաւիթ սիրտն իւր. զի եհատ զտը
տուն լօդկի նր: 7 * Եւ ասէ դաւիթ
ցարս իւր. քաւ լիցի ինձ 'ի Տէ, թէ
արարից զբանդ զայդ տեառն իմում.
օծելոյ Տն, մխել 'ի նա զձեռս իմ. զի
օծեալ Տն է նա: 8 * Եւ հաճեաց դաւ
իթ զարսն իւր բանիւք. և ոչ ետ նց
յառնել և սպանանել զսաւուղ: և
սաւուղ յարեաւ յայրէ անտի և էջ 'ի
ճանապարհն: 9 * Եւ յարեաւ դաւիթ
զկնի նորա. ել յայրէ անտի: և աղա_
ղակեաց դաւիթ զհետ նորա և ասէ:
տէր իմ արքայ. և հայեցաւ սաւուղ
'ի թիկունս նորա. և անկաւ դաւիթ
'ի վր երեսաց իւրոց յերկիր. և երկր_
պագ նմա երկիր: 10 * Եւ ասէ դաւիթ ցսաւ
ուղ: ընդէ՞ր լսես բանից ժողովր_
դեանն՝ որք ասեն թէ դաւիթ խնդ_
րէ զանձն քո: 11 * Ահա յաւուրս յայսմիկ
տեսին աչք քո՝ որպ մատնեաց զքեզ
Տր այսօր 'ի ձեռս իմ յայրի անդ. և
ոչ կամեցայ սպանանել զքեզ. և
խնայեցի 'ի քեզ. և ասացի թէ ոչ
ձգեցից զձեռն իմ 'ի տէր իմ: զի օծեալ
Տն է նա: 12 * Եւ տես հայր իմ: ահա
տտուն լօդկի քո 'ի ձեռին իմում. ես
հատի զտտուն հանդերձի քոյ. և ոչ
սպանի զքեզ: և ծանիր և տես այսօր.
զի ոչ գոյ 'ի ձեռին իմում չարութի.
և ոչ արհամարհութի. և ոչ ամպարշ
տութի. և ոչ մեղայ ինչ քեզ. և դու
պաշարես զանձն իմ առնուլ զնա:
13 * Դատ արասցէ Տէր ընդ իս և ընդ
քեզ. և առցէ Տր զվրէժ իմ 'ի քէն.
և ձեռն իմ մի եղիցի 'ի քեզ: 14 * Որպէս
ասէ հին առասպելն. յանօրէն ձե_
ռաց ելցէ վնաս. և ձեռն իմ մի եղի_
ցի 'ի քեզ: 15 * Եւ արդ՝ զո՞յր հետ ելեալ
ես արքայդ իսրայէլի. և զո՞ հալա_
ծես. զհետ շան միոյ մեռելոյ. և զհետ
լուոյ միոյ: 16 * Եղիցի Տր դատաւոր և

'Ի Բէէլ_ սամէսր

իրաւարար ընդ իս և ընդ քեզ։ տեսցէ Տէր՝ և դատեսցէ զդատաստանս իմ. և արասցէ ինձ իրաւունս ’ի ձեռաց քոց։ 17 * Եւ եղև իբրև կատարեաց դաւիթ խօսել զբանս զայսոսիկ ընդ սաւուղայ. և ասէ սաւուղ. այդ քո ձայն իցէ որդեակ իմ դաւիթ. և ամբարձ սաւուղ զձայն իւր և ելաց։ 18 * Եւ ասէ սաւուղ ցդաւիթ. դու ար դար ես քան զիս. զի դու հատուցեր ինձ բարիս. և ես հատուցի քեզ չարիս։ 19 * Եւ դու պատմեցեր ինձ այսօր զոր արարեր ինձ բարիս. և թէ ո՛րպ փակեաց զիս Տր̃ այսօր ’ի ձեռս քո. և ոչ սպաներ զիս։ 20 * Զի որպէս գտանէ ոք զթշնամիս իւր ’ի նեղութեն. և արձակիցէ զնա բարեաւ ընդ ճանապարհ, և Տէր հատուսցէ նմա բարիս. որպէս դու արարեր այսօր։ 21 * Եւ արդ գիտեմ, զի թագաւորելով թագաւորեսցես. և հաստատեսցի ’ի ձեռս քո թագաւորութի̃ն իէլի. 22 * Եւ արդ երդուի՛ր ինձ ’ի Տր̃. զի մի՛ սատակեսցես զզաւակ իմ զկնի իմ. և մի՛ եղծցես զանուն իմ ’ի տանէ հօր իմոյ։ 23 * Եւ երդուաւ դաւիթ սաւուղայ։ և գնաց սաւուղ ’ի տեղի իւր. և դաւիթ և արք իւր ելին ’ի մասաւրա յանձուկն։

## ԳԼ: ԻԵ:

Սամ. 28. 3. Սերաք. 46. 23.

1 Եւ մեռաւ սամուէլ։ և ժողովեցան ա̃մ իսրայէլ և կոծեցան զնա։ և թաղեցին զնա ’ի տան իւրում յարիմաթեմ. և յարեաւ դաւիթ և էջ յանապատն մաօնայ։ 2 * Եւ էր այր մի ’ի մաօն. և հօտք իւր ’ի կարմելոս. և այրն մեծատուն էր յոյժ. և նորա էին ոչխարք երեքհազարք. և այծք հազարք։ և եղէն կտուրք հօտիցն ’ի կարմելոս։ 3 * Եւ անուն նր̃ նաբաղ̃ և անուն կնոջ նորա աբիգեա. և կին նր̃ առատ իմաստութե̃. և գեղեցիկ տեսլեամբ յոյժ. և այրն խիստ և չար խորհրդովք, և այր շնաբարոյ։ 4 * Եւ լուաւ դաւիթ յաւուր յայնմիկ եթէ կտրէ նաբաղ̃ կարմեղացի զհօտս իւր։ 5 * Եւ առաքեաց դաւիթ մանկունս տասն. և ասէ դաւիթ ցմանկունսն. ելէ՛ք ’ի կարմելոս. և երթա՛յք առ նաբաղ̃. և հարցէ՛ք յանուն իմ զողջունէ նորա։ 6 * Եւ ասասջի՛ք այսպէս։ ’ի սոյն աւուրս ո՛ղջ իցես դու և տուն քո. և ա̃մ որ ինչ քո ողջ լիցի։ 7 * Եւ արդ՝ աւասիկ լուայ եթէ կտուրք են հօտիցքոց, որք ընդ մեզ էին յանապատի աստ. և ո՛չ արգելաք զդոսա. և ո՛չ խնդրեցաք զդոսա. և ոչ ի՛ւիք զա̃մ աւուրս որչափ և էին ընդ մեզ ’ի կարմելոս։ 8 * Հա՛րց զմանկտիդ քո և պատմեսցեն քեզ։ և գտցեն մանկունքդ շնորհս առաջի աչաց քոց. զի ’ի բարի աւուր եկին։ արդ՝ տացես որչափ ինչ և գտցէ ձեռն քո՝ ծառայից քոց. և որդւոյ քում դաւթի։ 9 * Եւ եկին մանկունքն դաւթի. և խօսեցան զբանսն ընդ նաբաղայ. ը̃ա̃մ բանիցն այնոցիկ. յանուն դաւթի։ 10 * Ընթոստացաւ. և ետ պատասխանի ծառայիցն դաւթի և ասէ։ ո՛ դաւիթ. կամ ո՛ որդին յեսսեայ. բազմացեալ են այսօր ծառայք գնացականք իւրաքանչիւր յերեսաց տեառն իւրոյ։ 11 * Եւ արդ առնուցո՞ւմ զհաց իմ, և զգինի իմ, և զզենլիս իմ, զոր զենի կտրողաց իմոց պատրուճակս, և տայցեմ արանց զորս ո՛չ գիտիցեմ ուստի իցեն։ 12 * Եւ դարձան մանկունքն դաւթի ’ի ճանապարհ իւրեանց։ և եկին պատմեցին դաւթի ը̃ա̃մ բանից այնոցիկ։ 13 * Եւ ասէ դաւիթ ցարսն իւր. ածէ՛ք ընդ մէջ իւրաքանչիւր զսուր իւր. և ածին ընդ մէջ՝ այր իւրաքանչիւր զսուսեր իւր։ և էած ընդ մէջ և դաւիթ զսուր իւր. և ելին զհետ դաւթի իբրև չորեքհարիւր. և երկերիւրն ևս անդէն նստան առ կարասին։ 14 * Եւ աբիգեայ կնոջ նաբաղու պատմեաց միոմն ’ի մանկտւոյ անտի և ասէ. ահա առաքեաց դաւիթ զհրեշտակս յանապատէն օրհնել զտէր մեր. և նա խուսեաց ’ի նոցանէն։ 15 * Եւ արքն երախտաւորք էին մեզ յոյժ։ և ո՛չ արգելին զմեզ. և ո՛չ ի՛նչ խնդրեցին զմեզ. որչափ եղեաք ընդ նոսա ’ի բացի։ 16 * Եւ իբրև զպարիսպ էին մեզ զցայգ և զցերեկ՝ զամենայն աւուրսն որչափ էաք ընդ նոսա՛ և արածէաք զխաշինսն։ 17 * Եւ արդ գիտասցես և տեսցես զինչ գործեսցես. զի վճարեալ է չարութի̃ ’ի վ̃ր տեառն մերոյ. և ’ի վ̃ր ա̃մ տան նր̃. և նա ժանտ է. և ո՛չ գոյ խօսել ընդ նմա։ 18 * Եւ ա՛ճապարեաց աբիգեա. և էառ երկերիւր նկանակ. և երկուս ամանս գինւոյ. և հինգ ոչխար հասուցեալ. հինգ արդու փոխնդոյ. և կայթ մի չամիչ, և պաղատիտս երկերիւր. և եդ ’ի վերայ իշոյ։ 19 * Եւ ասէ ցմանկտին իւր. երթա՛յք յառաջագոյն քան զիս. և ես գամ զկնի ձեր։ և առն իւրում նաբաղայ ո՛չ էհան ’ի վեր։ 20 * Եւ եղև ընդ ելանել նր̃ յէշն, և ընդ իջանել զանխուլ լերինն, և ահա դաւիթ և արք նորա իջանէին ընդ առաջ նորա. և դիպե

ցաւ

ցաւ նոցա ։ * Եւ ասէ դաւիթ․ զուր 21
ուրեմն պահեցի զա՟մ ինչ նաբաղու
յանապատի անդ․ և ոչ խուեցաք առ-
նուլ յա՟մէ որ ինչ էր նորա և ոչ ինչ․
և հատոյց ինձ չար երախտեաց իմոց։
* Այսպէս արասցէ Ա՟ծ դաւթի, և 22
այսպէս յաւելցէ, եթէ թողից յա՟մէ
նաբաղու մինչև ցառաւօտն․ որ զոր-
մով միզիցէ։ * Իբրև ետես աբիգեա 23
զդաւիթ, փութացաւ և վաղեաց ի
յիշոյն․ և անկաւ առաջի դաւթի ՚ի վ՟ր
երեսաց իւրոց․ և երկիր եպագ նմա
յերկիր։ * Եւ անկաւ առ ոտս նորա 24
և ասէ․ յիս տէր մեղս իմ․ բայց խօ-
սեսցի աղախին քո յականջս քո․ և
լուիցես բանից աղախնոյ քոյ։ * Մի 25
դիցէ տէր իմ զսիրտ իւր ՚ի վ՟ր առն
ժանտի նաբաղայ․ զի ըստ անուան
նր և ինքն է։ նաբաղ անուն նորա․ և
անզգամութի ընդ նմա։ և ես աղա-
խին քո ոչ տեսի զմանկունսն քո զոր
առաքեցեր։ * Եւ արդ կենդանի է 26
Տր․ և կենդանի է անձն քո։ որպ ար-
գել զքեզ Տր չգալ յարիւն անպարտ․
այլ պահել զձեռն քո առ քեզ․ և արդ՝
եղիցին իբրև զնաբաղ թշնամիք քո՝
և որք խնդրիցեն տեառն իմում չա-
րիս։ * Եւ արդ առ զօրհնութիս զայս 27
զոր եբեր աղախին քո տեառն իմում․
և տացես մանկտւոյդ՝ որք կան առա-
ջի տեառն իմում։ * Եւ բարձ զյանցանս 28
աղախնոյ քոյ ։ զի առնելով արասցէ
Տէր տեառն իմում տուն հաւատա-
րիմ․ զի զպատերազմ տեառն իմոյ
Տր պատերազմի․ և չարութի մի եր-
բէք գտցի ՚ի քեզ։ * Եւ ոչ յարիցէ 29
մարդ հալածել զքեզ․ և խնդրել
զանձն քո․ և եղիցի անձն տեառն իմոյ
ծրարեալ ՚ի ծրարի կենաց Տն Ա՟յ․
և զանձն թշնամեաց քոց պարսաքա-
րեսցես ՚ի մէջ պարսատկաց ։ * Եւ 30
եղիցի յորժամ արասցէ Տէր տեառն
իմում զա՟մ բարիս զոր խօսեցաւ ա-
ծել ՚ի վ՟ր քո, և տացէ զքեզ պատուէ-
րանաւ առաջնորդ ՚ի վերայ իսլի։
* Մի լիցի պղծութի և գայթագղու- 31
թի ՚ի սրտի տեառն իմոյ․ հեղուլ զա-
րիւն արդար տարապարտուց․ և պա-
հեսցի ձեռն տեառն իմոյ առ իւր․ և
բարի արասցէ Տր տեառն իմում․ և
յիշեսցես զաղախին քո, բարի առ-
նել նմա։ * Եւ ասէ դաւիթ ցաբի- 32
գեայ․ օրհնեալ Տր Ա՟ծ իսլի․ որ առա-
քեաց զքեզ այսօր ընդ առաջ իմ։
* Եւ օրհնեալ բարք քո։ և օրհնեալ 33
լիցիս դու․ որ արգելեր զիս այսօր աստ․
չերթալ յարիւն․ և պահել զձեռն իմ
առ իս։ * Բայց կենդանի է Ա՟ծ իսլի․ 34
որ արգել զիս այսօր ՚յառնելոյ քեզ
չար․ զի եթէ չէիր փութացեալ և ե-
կեալ ընդ առաջ իմ․ քանզի ասացի․
թէ ոչ մնասցէ նաբաղայ մինչև ցլոյս
35 առաւօտու որ զորմով միզիցէ։ * Եւ
էառ դաւիթ ՚ի ձեռաց նորա զա՟մ
ինչ զոր եբեր նմա․ և ասէ ցնա․ ե՛լ ՚ի
տուն քո խաղաղութբ․ տես զի լուայ
ձայնի քում․ և ակն առի երեսաց քոց։
36 * Եւ գնաց աբիգեա առ նաբաղ․ և
էր խրախութի տան նր իբրև զխրա-
խութի թագաւորի։ և սիրտ նաբա-
ղու զուարճացեալ էր յինքեան․ և ինքն
արբեալ էր յոյժ․ և ոչ պատմեաց նմա
բան մի մեծ կամ փոքր մինչև ցլոյս
37 առաւօտուն։ * Եւ եղև ընդ առաւ-
օտն․ իբրև սթափեցաւ նաբաղ ՚ի
գինւոյ անտի, պատմեաց նմա կին
իւր զբանս զայսոսիկ․ և մեռաւ սիրտ
նորա ՚ի նմա․ և եղև իբրև զքար։
38 * Եւ եղեն իբրև աւուրք տասն․ և
39 էհար Տր զնաբաղ, և մեռաւ։ * Եւ
լուաւ դաւիթ եթէ մեռաւ նաբաղ․
և ասէ․ օրհնեալ Տէր, որ դատեաց
զդատաստան նախատանաց իմոց՝ ՚ի
ձեռաց նաբաղայ․ և զծառայ իւր ապ-
րեցոյց ՚ի ձեռաց չարեաց․ և զչարու-
թի նաբաղայ դարձոյց Տր ՚ի գլուխ
նորա։ և առաքեաց դաւիթ և խօսե-
ցաւ ընդ աբիգեայ առնուլ զնա իւր
40 կնութե։ * Եւ եկին ծառայքն դաւ-
թի․ առ աբիգեա ՚ի կարմելոս․ խօսե-
ցան ընդ նմա և ասեն․ դաւիթ առա-
քեաց զմեզ առ քեզ՝ առնուլ զքեզ
41 իւր կնութե։ * Եւ յարեաւ․ երկիր
եպագ ՚ի վերայ երեսաց իւրոց յերկիր
և ասէ․ ահաւասիկ կայ աղախին քո
՚ի սարկութի լուանալոյ զոտս ծառայ-
42 ից տեառն իմոյ ։ * Եւ փութացեալ
յարեաւ աբիգեա․ ել յէջ․ և հինգ
աղջիկ գնացին զհետ նորա․ և չոգաւ
զհետ ծառայիցն դաւթի․ և եղև նր
43 կին։ * Եւ զաքինովամ էառ դաւիթ
յեզրայելէ․ և էին նր երկոքեան կա-
44 նայք ։ * Եւ սաւուղ ետ զմեղքող
զդուստր իւր զկին դաւթի, փաղտիե-
լի որդւոյ յեմեսսեայ ռոմմացւոյ։

## ԳԼ։ ԻԵ։

1 Եւ ‖ եկին զիփացիքն ՚ի մայրէն ‖ Ս՟ղմ․ 23․19․
առ սաւուղ ՚ի բլուրն․ և ասեն․
ահա դաւիթ թաքուցեալ է առ մեզ
՚ի բլրին եքեղատու՝ հանդէպ յեսեմո-
2 նայ ։ * Եւ յարեաւ սաւուղ․ և էջ
յանապատն զիփայ․ և ընդ նմա երեք
հազարք արանց ընտրելոց յիսրայէլէ՝
խնդրել զդաւիթ յանապատին զի-
3 փայ ։ * Եւ բանակեցաւ սաւուղ ՚ի
բլրին

բլրին Եքեղատու հանդէպ յեսսեմո-
նայ 'ի վ՟ճ անապատին ։ Եւ դաւիթ
նստէր յանապատին ։ իբրեւ ետես դա-
ւիթ թէ եկն սաւուղ զկնի նորա յա
նապատն ։ 4 * Առաքեաց դաւիթ լր-
տեսս ․ եւ գիտաց ․ եթէ եկեալ է սաւ
ուղ պատրաստութեք 'ի կէիլա ։ 5 * Եւ
յարեաւ դաւիթ գաղտ՝ եւ եկն 'ի տե
ղին ուր նստէր սաւուղ ․ եւ ետես դա
ւիթ զտեղին ուր ննջեաց սաւուղ ․ եւ
անդ աբեններ որդի ներեայ զօրավար
նր ․ եւ սաւուղ ննջէր 'ի պաղպաջունսն ․
եւ զօրն բանակեալ էր շուրջ զնովաւ ։
6 * Պատասխանի ետ դաւիթ եւ ասէ
ցաբիմելէք քետացի ։ եւ ցաբեսսա որ
դի շարուհեայ, եղբայր յովաբայ, եւ
ասէ ։ ո՞ մտցէ ընդ իս առ սաւուղ 'ի
բանակն ․ եւ ասէ աբեսսա՝ ես մտից
ընդ քեզ ։ 7 * Եւ մտին դաւիթ եւ ա-
բեսսա 'ի զօրն զցայգ ։ եւ ահա սաւուղ
ննջէր 'ի պաղպաջունսն ․ եւ գեղարդն
ցցեալ յերկրի 'ի սնարից նր ․ եւ աբեն
ներ եւ զօր նորա ննջէին շուրջ զնո-
վաւ ։ 8 * Եւ ասէ աբեսսա ցդաւիթ ։
փակեաց Տէր այսօր զթշնամի քո 'ի
ձեռս քո ․ արդ հարից զսա գեղար-
դեամբս յերկիր մի անգամ եւ ոչ կրկ
նեցից ։ 9 * Եւ ասէ դաւիթ ցաբես-
սա ․ մի՛ հարկաներ զդա ․ զի ո՞վ իցէ
որ ձգիցէ զձեռն իւր յօծեալ Տն եւ
սրբիցի ։ 10 * Եւ ասէ դաւիթ ․ կենդա
նի է Տր ։ բայց եթէ Տր խրատեսցէ
զդա ։ եւ կամ թէ օր իւր եկեսցէ եւ
մեռցի ։ կամ թէ 'ի պատերազմ մտցէ
եւ յաւելցի ։ 11 * Քաւ լիցի ինձ 'ի Տէ
ձգել զձեռն իմ՝ յօծեալ Տն ։ բայց
արդ առ զգեղարդնդ 'ի սնարից դո-
րա ․ եւ զկուժ ջրոյդ ․ եւ գնասցուք 'ի
մեզ ։ 12 * Եւ եառ դաւիթ զգեղարդն
եւ զկուժ ջրոյն 'ի սնարից նր ․ եւ գնա-
ցին յինքեանս ։ եւ ոչ ոք էր որ տեսա-
նէր ․ եւ ոչ որ գիտէր ․ եւ ոչ ոք էր որ
յառնէր ․ զի ամենեքեան 'ի քուն էին ․
քանզի թմրութի 'ի Տէ անկաւ 'ի
վերայ նց ։ 13 * Եւ էանց դաւիթ յայն
կողմն ։ եւ եկաց 'ի վ՟ճ գլխոյ լերինն 'ի
բացեայ ․ եւ բազում ճանապարհ էր
'ի մէջ նոցա ։ 14 * Բարբառեցաւ դաւիթ
'ի զօրն ․ եւ խօսեցաւ ընդ աբեններայ
եւ ասէ ։ ո՞չ տաս պատասխանի աբեն
ներ ։ եւ ասէ ․ ո՞վ ես դու որ կոչես զիս
առ արքայ ։ 15 * Եւ ասէ դաւիթ ցաբեն
ներ ․ ո՛չ ապաքէն այր քաջ ես դու՝ եւ
ո՞վ է իբրեւ զքեզ 'ի մէջ իղի ․ եւ ընդ-
է՞ր ոչ պահես զտէր քո զարքայ ․ զի ե-
մուտ ոմն 'ի զօրուէդ սպանանել զտէր
քո զարքայ ։ 16 * Ոչ բարի բանդ զոր
արարեր ․ կենդանի է Տէր զի որդիք
մահու էք դուք՝ որք պահէք զտէր ձեր
զարքայ զօծեալ Տն ։ եւ արդ աւասիկ
գեղարդն արքայի եւ կուժ ջրոյն ո՞ւր
է որ առ սնարս նր կային ։ 17 * Եւ ծա
նեաւ սաւուղ զձայնն դաւթի եւ ասէ․
այդ ձայն քո՞ է որդեակ իմ դաւիթ ։
եւ ասէ դաւիթ ։ ծառայ քո եմ տէր
իմ արքայ ։ 18 * Եւ ասէ ․ ընդէ՞ր է այդ
տէր իմ ․ զի մտեալ ես զկնի ծառայի
քոյ ։ զի՞ մեղայ ․ եւ զի՞ գտաւ յիս չար ։
19 * Եւ արդ լուիցէ տէր իմ արքայ ըզ
բանս ծառայի իւրոյ ․ եթէ Այ շար
ժեալ է զքեզ 'ի վ՟ճ իմ, ճենճերեսցի
զոհ քո ։ եւ եթէ որդւոց մարդկան՝
անիծեալ լիցին դոքա առաջի Տն ։ զի
մերժեցին զիս այսօր չհաստատել ինձ
'ի ժառանգութե Տն ․ ասեն՝ երթ
ծառայեա աստուծոց օտարաց ։ 20 * Եւ
արդ՝ մի անկցի արիւն իմ յերկիր ա-
ռաջի երեսաց Տն ։ զի ելեալ է թա-
գաւոր իղի խնդրել զանձն իմ, որպ
ընթանայցէ ագռաւ ընդ լերինս ։
21 * Եւ ասէ սաւուղ ․ մեղայ ․ դարձիր
որդեակ իմ դաւիթ ․ զի ոչ ինչ արա
րից քեզ չար՝ փոխանակ զի պատուա-
կան է անձն իմ առաջի աչաց քոց ․ եւ
ես յայսմ աւուր ժամանակի զբաղն-
դիր եւ յանցաւոր եմ յոյժ ։ 22 * Պատաս-
խանի ետ դաւիթ եւ ասէ ։ ահաւասիկ
գեղարդն արքայի ․ անցցէ մի ոք 'ի
մանկտւոյդ եւ առցէ զսա ։ 23 * Եւ Տէր
հատուսցէ իւրաքանչիւր ումեք ըստ
արդարութեց իւրոց՝ եւ ըստ հաւա-
տարմութե ․ թէ որպ մատնեաց զքեզ
Տր այսօր 'ի ձեռս իմ ․ եւ ոչ կամեցայ
ձգել զձեռն իմ՝ յօծեալ Տն ։ 24 * Եւ
որպէս մեծացաւ անձն քո աստ այսօր
առաջի աչաց իմոց, այնպէս մեծաս-
ցի անձն իմ առաջի Տն ․ եւ ամրացուս
ցէ զիս ․ եւ ապրեցուսցէ զիս յամ նե
ղութենէ ։ 25 * Եւ ասէ սաւուղ ցդա-
ւիթ ․ օրհնեալ ես դու որդեակ իմ
դաւիթ ․ եւ առնելով արասցես ․ եւ զօ
րանալով զօրասցիս ։ եւ գնաց դաւիթ
զճանապարհ իւր ․ եւ սաւուղ դարձաւ
'ի տեղի իւր ։

## ԳԼ ։ ԻԷ ։

1 Եւ խօսեցաւ դաւիթ 'ի սրտի իւր
ում եւ ասէ ։ արդ անկանիցիմ
յաւուր միում 'ի ձեռս սաւուղայ, եւ
չէ ինձ բարի ․ եթէ ոչ դարձայց յեր-
կիրն փղշտացւոց ։ եւ եթէ իցէ խնդ-
րեսցէ զիս սաւուղ յամ սահմանս իղի
ապրեցայց 'ի ձեռաց նորա ։ 2 * Եւ յա
րեաւ դաւիթ ․ եւ էանց ինքն՝ եւ վեց-
հարիւր արքն որք ընդ նմա ․ եւ գնաց
առ անքուս որդի մովաքայ՝ արքայ
գե-

գեթայ: 3 *Եւ նստաւ դաւիթ ընդ անքուսայ 'ի գէթ. ինքն՝ և արք իւր՝ իւրաքանչիւր տամբ իւրով: և դաւիթ և երկոքին կանայք իւր. աքինովամ յեզրայելացի. և աբիգեա կին նաբաղայ կարմելացւոյ: 4 *Եւ ազդ եղև սաւուղայ եթէ փախեաւ դաւիթ 'ի գէթ՝ և ոչ ևս յաւել խնդրել զնա: 5 *Եւ ասէ դաւիթ ցանքուս. եթէ եգիտ ծառայ քո շնորհս առաջի աչաց քոց, տացես ինձ տեղի 'ի միում քաղաքաց յանդաւ. և նստայց անդ. և ընդէ՞ր նստիցի ծառայ քո 'ի թագաւորեալ քաղաքի ընդ քեզ: 6 *Եւ ետ նմա անքուս յաւուր յայնմիկ զսիկելակ. վասն այնորիկ եղև սիկելակ արքայի հրէաստանի մինչև ցայսօր: 7 *Եւ եղև թիւ աւուրցն զորս նստաւ դաւիթ յանդի այլազգեացն՝ աւուրք չորից ամսոց: 8 *Եւ ելանէր դաւիթ և արքն որք ընդ նմա էին. և ասպատակէին 'ի վերայ ամ գեսուրացւոյն. և գեզերացւոյն. և ամաղեկացւոյն. և ահա բնակէր երկիրն 'ի գեղամսուրայ յապահովելոց պարսպաւորաց մինչև ցեգիպտոս: 9 *Եւ հարկանէր դաւիթ զերկիրն և ոչ ապրեցուցանէր զայր և զկին. և առնոյր հօտս և անդեայս. և էշս. և ուղտս. և հանդերձս. և դառնայր՝ և գայր առ անքուս: 10 *Եւ ասէր անքուս ցդաւիթ. որո՞ւմ կողման արշաւեցիք այսօր: և ասէր դաւիթ: 'ի կողմանս հարաւոյ հրէաստանի. և 'ի կողմանս յերամէլի. և 'ի կողմանս կենեզայ: 11 *Զայր և զկին ոչ ապրեցուցի ածել 'ի գէթ: ասեմ. գուցէ ազդ լինիցի զմէնջ 'ի գէթ. և ասիցեն թէ զայս ինչ գործէ դաւիթ: և այս իրաւունք էին նորա զամ աւուրս որչափ և նստաւ դաւիթ յանդի այլազգեացն: 12 *Եւ հաւատաց անքուս դաւթի յոյժ. և ասէ. ամաչելով ամաչէ 'ի ժողովրդենէ իւրմէ յիսրայէլէ. և եղիցի ինձ ծառայ յաւիտեան:

## ԳԼ: ԻԸ:

1 Եւ եղև յաւուրսն յայնոսիկ՝ ժողովեցան այլազգիքն բանակօք իւրեանց ելանել պատերազմիլ ընդ իլի: և ասէ անքուս ցդաւիթ: գիտելով գիտասցես՝ զի ընդ իս ելանելոց ես 'ի պատերազմ դու և արք քո: 2 *Եւ ասէ դաւիթ ցանքուս: այդպէս լիցի: արդ գիտասցես զինչ գործեսցէ ծառայ քո: և ասէ անքուս ցդաւիթ. այդպէս լիցի. անձնապահապետ արարից զքեզ զամենայն աւուրս: 3 *‖Եւ սամուէլ մեռաւ. և կոծեցան զնա ամ իսրայէլ. և թաղեցին զնա 'ի քաղաքին իւրում յարիմաթեմ: և սաւուղ եբարձ զվհուկս և զգէտս յերկրէ: 4 *Եւ գումարեցան այլազգիքն. և եկին բանակեցան 'ի սոմման: և ժողովեաց սաւուղ զամ այր իլի. և բանակեցան 'ի գեղբուէ: 5 *Իբրև ետես սաւուղ զբանակ այլազգեացն՝ երկեաւ. և զարհուրեցաւ սիրտ նր յոյժ: 6 *Եւ եհարց սաւուղ 'ի Տէ. և ոչ արար նմա պատասխանի Տր. երազովք և գուշակութբք և մարգարէիւք: 7 *Եւ ասէ սաւուղ ցծառայս իւր: ‖ խնդրեցէք ինձ կին մի վհուկ. և երթայց առ նա և խնդրեցից նովաւ: և ասեն ծառայք նորա ցնա. ահաւէ կին մի վհուկ յայենդովր: 8 *Եւ ծպտեցաւ սաւուղ. և զգեցաւ այլ հանդերձս. և գնաց ինքն և երկու արք ընդ նմա: և եկին առ կինն գիշերի: և ասէ ցնա. դիւթեա՛ դու ինձ վհկաւդ. և հա՛ն ինձ զոր ես ասացից քեզ: 9 *Եւ ասէ կինն: ահա դու ինքնին իսկ գիտես. զոր ինչ արար սաւուղ. որպէս սատակեաց զվհուկս և զգէտս յերկրէ. և արդ ընդէ՞ր որսաս զանձն իմ սպանանել զնա: 10 *Եւ երդուաւ նմա սաւուղ 'ի Տր և ասէ. կենդանի է Տր. եթէ պատահեսցի քեզ վնաս 'ի բանիս յայսմիկ: 11 *Եւ ասէ կինն. զո՞ հանից քեզ: 12 և ասէ՝ զսամուէլ հա՛ն ինձ: *Եւ ետես կինն զսամուէլ: և աղաղակեաց 'ի ձայն մեծ. և ասէ կինն ցսաւուղ. ընդէ՞ր խաբեցեր զիս. և դու սաւուղ ես: 13 *Եւ ասէ ցնա արքայ. մի՛ երկնչիր՝ ասա՛ զո՞ տեսեր: և ասէ ցնա կինն. աստուածս տեսանեմ ելեալս յերկրէ: 14 *Եւ ասէ ցնա՝ զի՞նչ գիտացեր: և ասէ ցնա. այր ուղղորդ ելեալ յերկրէ. և արկեալ զիւրև կրկնոց: և ծանեաւ սաւուղ եթէ սամուէլ է նա: և անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց յերկիր՝ և եպագ նմա երկիր: 15 *Եւ ասէ սամուէլ ցսաւուղ. ‖ զի՞ լլկեցեր զիս ելանել ինձ: և ասէ սաւուղ. նեղեալ եմ յոյժ. և այլազգիք պատերազմին ընդ իս. և Ած հեռացաւ յինէն. և ո՛չ լուաւ ինձ՝ ոչ մարգարէիւք և ո՛չ երազովք: և արդ կոչեցի զքեզ ցուցանել ինձ զինչ գործեցից: 16 *Եւ ասէ սամուէլ. զի՞ հարցանես զիս. և Տր հեռացաւ 'ի քէն. և եղև ընդ ընկերի քում: 17 *‖Եւ արար ընդ քեզ Տր որպէս խօսեցաւ յիմ ձեռն. և պատառեսցէ Տր զթագաւորութիդ 'ի ձեռաց քոց. և տացէ զդա ընկերի քում դաւթի: 18 *Զի ոչ լուար ձայնի Տն. և ոչ արարեր զսրտմտութի բարկութե նորա

յամա_

‖ Վեր. 25.1. Սիրաք. 46.23.

‖ Ղևտ. 20.27. 2 Օրէն. 18.11. Գործ. 16.16.

‖ Սիրաք. 46.23.

‖ Վեր. 15.28.

յամաղէկ ։ վասն այնր բանի արար քեզ Տր զայդ յաւուր յայսմիկ ։ 19 * Եւ մատնեսցէ Տր զիէլ քեւ հանդերձ 'ի ձեռս այլազգեացն. և վաղիւ դու և որդիք քո ընդ քեզ անկցին. և զբանակն իէլի տացէ Տր 'ի ձեռս այլազգեացն ։ 20 * Եւ փութացաւ սաւուղ և անկաւ յոտնկելեայ 'ի գետին ։ և զարհուրեցաւ յոյժ 'ի բանիցն սամուելի. և զօրութիւն ոչ ևս գոյր 'ի նմա. զի ոչ եկեր հաց զտիւն ողջոյն և զգիշերն ամենայն ։ 21 * Եւ եմուտ կինն առ սաւուղ. և ետես զի տագնապեալ էր յոյժ. և ասէ ցնա ։ ահա լուաւ աղախին քո ձայնի քում. և եդի զոգի իմ 'ի ձեռին իմում. և ունկնդիր եղէ բանիցն զոր խօսեցար ընդ իս ։ 22 * Եւ արդ լուր և դու ձայնի աղախնոյ քոյ. և եդից առաջի քո պատառ մի հաց. և կերիցես. և եղիցի քեզ զօրութիւն. զի երթիցես զճանապարհ քո ։ 23 * Եւ ոչ կամեցաւ ուտել ։ և բռնադատեցին զնա ծառայքն իւր և կինն. և լուաւ ձայնի նոցա. և յարեաւ 'ի գետնոյն. և նստաւ յաթոռ ։ 24 * Եւ կնոջն սնուցեալ էր որթ մի 'ի տան ։ և փութացաւ եզեն զնա. և էառ ալիւր՝ թրեաց. և եփեաց բաղարջս ։ 25 * Եւ մատոյց առաջի սաւուղայ. և առաջի ծառայից նորա ։ և կերին, և յարեան գնացին զգիշերն զայն.

## Գլ ։ ԻԹ.

1 Եւ ժողովեցին այլազգիքն զամ զբանակս իւրեանց յափեկ. և բանակեցաւ իէլ յայենդովր յեզրայելի։ 2 * Եւ նախարարք այլազգեացն հարիւրաւորք և հազարաւորք։ և դաւիթ և արք իւր երթային յետոյ ընդ անքուսայ։ 3 * Եւ ասեն նախարարք այլազգեացն ։ ո՞յք են դոքա որք անցանեն ։ և ասէ անքուս ցնախարարս այլազգեացն ։ ո՞չ դա է դաւիթ ծառայ սաւուղայ արքայի իէլի. և այս երկու ամք են զի առ մեզ է. և ոչ ինչ գտի 'ի դմա յօրէ յորմէ հետէ անկաւ 'ի մեզ մինչև ցայսօր ։ 4 * ‖ Եւ խռովեցան նմա նախարարք այլազգեացն. և ասեն ցնա ։ դարձո՛ զայրն . և երթիցէ 'ի տեղի իւր. ուր կացուցեր զնա անդ ։ և մի՛ եկեսցէ ընդ մեզ 'ի պատերազմ. և մի՛ լիցի դաւաճան բանակիս ։ և իւ՞ հաճեսցի դա ընդ տեառն իւրում, եթէ ոչ գլխովք արանցդ այդոցիկ։ 5 * Ո՞չ այդ դաւիթ է. որում նուագէին 'ի պարս. և ասէին . եթէ եհար սաւուղ զհազարս՝ և դաւիթ զբիւրս։ 6 * Եւ կոչեաց անքուս զդաւիթ. և ասէ ցնա. կենդանի է Տր. զի ուղիղ ես և բարի ես դու յաչս իմ. և մուտ քո և ել 'ի բանակի աստ ընդ իս. և ոչ գտի 'ի քեզ չարութիւն, յօրէ յորմէ հետէ եկիր առ իս՝ մինչև ցայսօր ժամանակի ։ և յաչս նախարարացն ոչ թուիս դու բարւոք ։ 7 * Եւ արդ դարձիր. և երթ 'ի խաղաղութիւն. և ոչ արասցես չարութիւն յաչս նախարարաց այլազգեացս ։ 8 * Եւ ասէ դաւիթ ցանքուս ։ զի՞նչ արարի քեզ. և զի՞նչ գտեր 'ի ծառայի քում. յօրէ յորմէ էի առաջի քո, մինչև ցայսօր. զի՞ ոչ գայցեմ պատերազմել ընդ թշնամիս Տն իմոյ արքայի ։ 9 * Պատասխանի ետ անքուս, և ասէ ցդաւիթ. գիտեմ զի բարւոք թուիս դու յաչս իմ իբրև զհրեշտակ Այ. այլ նախարարք այլազգեաց ասեն. մի՛ եկեսցէ ընդ մեզ 'ի պատերազմ ։ 10 * Եւ արդ կանխեա դու ընդ առաւօտն. դու և ծառայք տեառն քոյ, որք եկեալ են ընդ քեզ. և երթայք 'ի տեղին յորում կացուցի զձեզ. և բան ինչ յոռութեան մի՛ դիցես 'ի սրտի քում. զի հաճոյ ես դու առաջի իմ. և վաղվաղակի լինիցիք 'ի ճանապարհ. և լուսասցի ձեզ, և գնասջիք։ 11 * Եւ կանխեաց դաւիթ և արք իւր գնալ ընդ առաւօտն. և պահել զերկիր այլազգեացն ։ և այլազգիքն ելին 'ի պատերազմել ընդ իսրայէլի.

‖ 1. Սամ 12.19.

## Գլ ։ Լ.

1 Եւ եղև ընդ մտանել դաւթի և արանց նր 'ի սիկելակ յաւուրն երրորդի. և ամաղէկ ասպատակեաց 'ի հարաւակողմն. և 'ի սիկելակ. և եհար զսիկելակ, և այրեաց զնա հրով. 2 * Եւ գերեաց զկանայս և զամ ինչ որ 'ի նմա 'ի փոքուէ մինչև ցմեծ. և ոչ սպանին զայր և զկին. այլ գերեցին. և գնացին զճանապարհ իւրեանց։ 3 * Եւ եկն դաւիթ և արք իւր 'ի քաղաքն. և ահա այրեցեալ էր քաղաքն. և կանայք նց և ուստերք և դստերք իւրեանց գերեալք։ 4 * Եւ ամբարձին դաւիթ և արք նր զձայնս իւրեանց, և լացին մինչև ոչ ևս գոյր 'ի նոսա զօրութիւն լալոյ ։ 5 * Եւ երկոքին կանայքն դաւթի գերեցան. աքինովամ յեզրայելացի. և աբիգեա կին նաբաղու կարմելացւոյ ։ 6 * Եւ նեղեցաւ դաւիթ յոյժ. զի ասաց ժողովուրդն քարկոծել զնա. զի զայրացեալ էր ոգի ամ ժողովրդեանն՝ իւրաքանչիւր 'ի վերայ ուստերաց և դստերաց իւրեանց ։ և զօրացաւ դաւիթ 'ի Տր Այ իւր. 7 * Եւ ասէ դաւիթ ցաբիաթար քա-

հանայ

համայ որդի աքիմելէքայ. մատո́ զե-
փուտ. և մատոյց աքիաթար զե-
փուտն առ դաւիթ : * Եւ եհարց 8
դաւիթ 'ի Տէ, և ասէ. պնդեցայց զկնի
գեդդուրայն այնորիկ, եթէ հաս-
նիցեմ նց: և ասէ ցնա Տր. պնդեա́ց.
և հասանելով հասանիս. և թափե-
լով թափեսցես : * Եւ գնաց դաւիթ 9
600 և չորեքհարիւր արքն որք ընդ նմա.
և եկին մինչև ցհեղեղատն բոսորայ.
և աւելորդքն զտեղի առին :
* Եւ պնդեցաւ դաւիթ չորեքարիւր 10
արամբքն. և երկերիւր արք մնացին.
որք նստան յայնկոյս հեղեղատին բո-
սորայ : * Եւ գտին այր մի եգիպտա- 11
ցի յանդին. և կալան զնա. և ածին
առ դաւիթ յանդն. և ետուն նմա
զհաց և եկեր. և արբուցին նմա ջուր:
* Եւ ետուն նմա կտոր մի պաղատը- 12
տաց. և երկուս չամչեայս. և եկեր.
և հաստատեցաւ այնու ոգի նր. քան
զի չէր կերեալ զհաց. և ոչ արբեալ
զջուր՝ զերիս տիւս և զերիս գիշերս:
* Եւ ասէ ցնա դաւիթ. ո՞յր ես դու. 13
և ուստի՞ ես : և ասէ պատանեակն.
եգիպտացի եմ ես՝ ծառայ առն ամա-
ղեկացւոյ. և եթող զիս տէր իմ. զի
նքողեցայ ես այս երրորդ օր : * Եւ 14
մեք ասպատակեցաք 'ի կողմանս հա-
րաւոյ քերեթայ. և 'ի կողմանս հրէ-
աստանի. և 'ի հարաւակողմն քաղէ-
բայ. և զսիկելակ այրեցաք հրով:
* Եւ ասէ ցնա դաւիթ. եթէ իջու- 15
ցանիցես զիս 'ի գեդդուրն յայն. և
ասէ ցնա եգիպտացին. երդուի́ր ինձ.
զի մի́ սպանցես զիս. և ոչ մատնեսցես
զիս 'ի ձեռս տեառն իմոյ. և իջուցից
զքեզ 'ի գեդդուրն : և երդուաւ նմա:
* Եւ իջոյց զնա անդր: և ահա նոքա 16
ցրուեալ էին ընդ երեսս ամ երկրին.
ուտէին և ըմպէին. և տօնէին ամե-
նայն աւարօքն մեծամեծօք զոր առին
յերկրէն այլազգեաց. և յերկրէն
յուդայ: * Եւ եհաս 'ի վերայ նց դա- 17
ւիթ. և եհար զնոսա դաւիթ յելա-
նելոյ արուսեկին մինչև ցերեկոյ՝ և 'ի
վաղիւ անդր. և ոչ ապրեցաւ 'ի նոցա-
նէ այր. բայց միայն պատանեակք չո-
րեքարիւր հեծան յուղտս և փախեան:
* Եւ թափեաց դաւիթ զամ ինչ զոր 18
առին ամաղեկացիքն. և զերկոսին
կանայս իւր թափեաց դաւիթ : * Եւ 19
ոչ սխալեցաւ 'ի նոցանէ 'ի փոքուէ մին-
չև ցմեծ : և յուստերաց և 'ի դստե-
րաց. և յաւարէն մինչև ցամ ինչ, զոր
առին 'ի նոցանէ՝ զամ ինչ դարձոյց
դաւիթ : * Եւ էառ դաւիթ զամ 20
հօտս՝ և զանդեայս. և տանէր առաջի



աւարին: և աւարին անուն կոչէր. թէ
21 այս աւար դաւթի է : * Եւ եկն դա-
ւիթ առ երկերիւրսն լքեալս յերթա-
լոյ զկնի դաւթի. և նստոյց զնոսա 'ի
հեղեղատին բոսորայ. և ելին ընդ
առաջ դաւթի և ընդ առաջ զօրուն
որ ընդ նմա: և մատեաւ դաւիթ առ
զօրն. և եհարց զողջունէ նորա 'ի խա-
22 ղաղութի: * Եւ պատասխանի ետուն
նմա ամենայն արք ժանտք և անզ-
գամք յարանց պատերազմողաց՝ որք
երթեալ էին ընդ դաւթի. և ասեն.
եթէ զի ոչ եղեն հետամուտք ը մեզ,
ոչ տացուք դոցա յաւարէ աստի զոր
թափեցաք. բայց եթէ զիւրաքանչիւր
զկին և զորդիս առցեն. և գնասցեն
23 'ի բաց : * Եւ ասէ դաւիթ : մի́ արաս-
ցի այդպէս եղբարք իմ. յետ մատնե-
լոյ զնոսա մեզ Տն. և պահելոյ զմեզ.
և մատնեաց Տր 'ի ձեռս մեր զգեդ-
24 դուրն եկեալ 'ի վերայ մեր : * Եւ ո՞
անսասցէ բանիցդ ձերոց այդոցիկ. զի
ոչ են ընդհատ 'ի ձէնջ. քանզի ըստ
մասին երթելոյն 'ի պատերազմ, նոյն
պէս եղիցի մասն վանապանին. ըստ
25 նմին օրինակի բաժանեսցին : * Եւ
եղև յօրէ յայնմանէ և անդր՝ իբրև
օրէնք և իրաւունք 'ի մէջ իէի մինչև
26 ցայսօր : * Եւ եկն դաւիթ 'ի սիկե-
լակ. և առաքեաց յաւարէ անտի ծե-
րոցն յուդայ՝ և ընկերաց իւրոց. և ա-
սէ. այդ ձեզ օրհնութի յաւարէ թշնա-
27 մեաց Տն: * Որք 'ի բեթէլդ էք. և
յռեմաթ հարաւոյ. և որք յեթեր:
28 * Եւ յարոէր. և որք յէփթամոթ.
29 և որք յէփթամա: * Եւ որք յերաքէլ.
և որք 'ի քաղաքս յերեմելացւոյն. և
30 որք 'ի քաղաքս կենեցւոյն : * Որք 'ի
հռամա. և որք 'ի բովրսանս. և որք
31 յանաթաք : * Եւ որք 'ի քեբրոն. և
որք յամենայն տեղիս ընդ որ շրջեցաւ
դաւիթ ինքն և արք իւր:

## Գլ: ԼԱ:

1 Եւ ‖ այլազգիքն պատերազմէին ‖1.Մն.
ընդ իէի: և փախեան արք իէի 10.2.3.
յերեսաց այլազգեաց: և անկանէին
2 վիրաւորք 'ի լերինն գեղբուէայ : * Եւ
հասին այլազգիքն 'ի սաւուղ և յոր-
դիսն նր: և հարին այլազգիքն զյով-
նաթան. և զամինադաբ. և զմելքի
3 սաւէ զորդիս սաւուղայ : * Եւ ծան-
րացաւ պատերազմն 'ի վր սաւուղայ:
և գտին զնա արք կորովիք աղեղնաւ-
որք. և վիրաւորեցաւ ընդ կարա-
4 անդամն 'ի ներքս : * ‖ Եւ ասէ սաւուղ ‖1.Մն.
ցկապարճակիրն իւր. մերկեա́ զսուր 10.4.
քո և խոցեա́ զիս նովաւ: գուցէ գայ-

ցեն անթլփատքն և խոցոտիցեն զիս․ և խաղայցեն զինև․ և ոչ կամեցաւ կապարճակիրն՝ քանզի երկեաւ յոյժ։ և էառ սաւուղ զսուսերն իւր․ և անկաւ ՚ի վ̃ ն̃ր։ 5 *Իբրև ետես կապարճակիրն թէ մեռաւ սաւուղ․ անկաւ և նա ՚ի վ̃ր սուսերին իւրոյ և մեռաւ ընդ նմա։ 6 *Եւ մեռաւ սաւուղ՝ և երեքեան որդիք նորա․ և կապարճակիրն իւր․ և ամենայն արք նորա յաւուր յայնմիկ ՚ի միասին։ 7 *Եւ իբրև տեսին արք իսրայէլի որք յայնկոյս հովտայն․ և որք յայնկոյս յորդանանու․ եթէ փախեան արք ի̃էլի․ և թէ մեռաւ սաւուղ և որդիք նորա․ թողին զքաղաքս իւրեանց և փախեան․ և եկին այլազգիքն և բնակեցան ՚ի նոսա։ 8 *Եւ եղև ՚ի վաղիւն անդր եկին այլազգիքն մերկացուցանել զվիրաւորսն․ և գտին զսաւուղ և զերիս որդիս նորա անկեալս ՚ի լերինն գեղբուէայ։ 9 *Դարձուցին զնա․ և մերկացուցին զհանդերձ նորա․ և հատին զգլուխ նորա․ և առաքեցին յերկիրն այլազգեաց շուրջանակի աւետաւորս ՚ի կուռս իւրեանց՝ և ՚ի ժողովուրդն։ 10 *Եւ եդին զկարասին նորա յաստարտէոնն․ և զմարմինս նոցա կախեցին զպարսպէն բեթսանայ։ 11 *‖Եւ լուան զնոցանէ բնակիչք յաբիսայ գաղաադացւոց զոր ինչ արարին այլազգիքն ընդ սաւուղ։ 12 *Եւ յարեան ամենայն այր զօրութեան․ և գնացին զգիշերն ա̃մ․ և առին զմարմինն սաւուղայ և զմարմինն յովնաթանու որդւոյ ն̃ր ՚ի պարսպէն բեթսանայ․ և բերին զնոսա յաբիս․ և այրեցին զնոսա անդ։ 13 *Եւ առին զոսկերս նոցա և թաղեցին զնոսա ընդ անդիւն յաբիսայ․ և պահեցին զեօթն օր։

‖2 Թագ. 2. 4.



Եւ դաւիթ և որդիքն Իսրայէլի խաղային առաջի Տեառն փողովք և նուագարանօք ։ 2. Թագ. 6. 5.



Իբրև ետես զհրեշտակն որ հարկանէր զժողովուրդն, ասէ. ահաւասիկ եմ, ես մեղայ ։ 2. Թագ. 24. 17.

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ ՍԱՄՈՒԻԼԻ.

## ԶՈՐ ՄԵՔ ԵՐԿՐՈՐԴ ԹԱԳԱՒՈ ՐԱՑ ԱՍԵՄՔ.

Գլուխ Առաջներորդ.

1 ԵՒ ԵՂԵՒ ՅԵՏ ՄԱՀՈՒԱՆՆ ՍԱՒՈՒՂԱՅ. և դաւիթ դարձաւ 'ի հարկանելոյ զամաղէկ. և նստաւ դաւիթ 'ի սիկելակ աւուրս երկուս ։ 2 * Եւ եղև յետ աւուրն երրորդի. և ահա այր եկաս 'ի բանակէ զօրուն սաւուղայ. և հանդերձք իւր պատառեալք. և հող զգլխով իւրով ։ և եղև 'ի մտանելն նորա առ դաւիթ. անկաւ յերկիր, և երկիր եպագ նմա ։ 3 * Եւ ասէ ցնա դաւիթ. ուստի՞ գաս դու. և ասէ ցնա. 'ի բանակէն իսրայէլի զերծեալ եմ ես ։

4 * Եւ ասէ ցնա դաւիթ. զի՞նչ բանդ է, պատմեա՛ ինձ ։ և ասէ. փախեաւ ժողովուրդն 'ի պատերազմէն. և անկան բազումք 'ի ժողովրդենէն և մեռան. և սաւուղ և յովնաթան մեռան ։
5 * Եւ ասէ դաւիթ ցպատանին որ պատմեաց նմա. զիա՞րդ գիտես եթէ մեռաւ սաւուղ և յովնաթան որդի նորա ։
6 * Եւ ասէ պատանին որ պատմեաց նմա ։ դիպելով դիպեցայ 'ի լերինն գեղբուէայ. և ահա սաւուղ յեցեալ կայր 'ի նիզակն իւր. և ահա կառք և ախոյեանք հեծելոց գումարեցան 'ի նա ։
7 * Եւ հայեցաւ 'ի թիկունս իւր և ետես զիս. և կոչեաց զիս. և ասեմ աւասիկ եմ ես ։
8 * Եւ ասէ ցիս. ո՞վ ես դու. և ասեմ. ամաղեկացի եմ ես.
9 * Եւ ասէ ցիս. արի՛ 'ի վերայ իմ և սպա՛ն զիս. զի կալաւ զիս մութն ահագին. մինչ դեռ ամենայն շունչ իմ յիս է.

10 *Եւ յարեայ 'ի վ՟ր նր՟ և սպանի զնա. զի գիտէի թէ ոչ է ապրանաց. յետ անկանելոյն նորա : և առի զթագն 'ի գլխոյ նր՟, և զապարանջանս 'ի բազկէ նր՟, և բերի զն՟ս տեառն իմում այսր :
11 *Եւ բուռն եհար դաւիթ զհան̃դերձից իւրոց և պատառեաց զն՟ս : և ա՟մ արք որք ընդ նմա՝ պատառեցին զհանդերձս իւրեանց : 12 *Եւ կոծեցան՝ և սգացին՝ և լացին՝ մինչև ցընդ-երեկս 'ի վերայ սաւուղայ և յովնաթանու որդւոյ նորա. և 'ի վ՟ր ժողովրդեանն յուդայ : և 'ի վ՟ր տանն իղի. զի հարան սրով : 13 *Եւ ասէ դաւիթ ցպատանին որ պատմեաց նմա. ուստի՞ ես դու : և ասէ. որդի առն պանդխտի ամաղեկացւոյ եմ ես : 14 *Ասէ ցնա դաւիթ. և ‖ զիա՞րդ ոչ երկեար ձգել զձեռն քո ապականել զօծեալն տ՟ն :

‖ Սաղ. 104. 15.

15 *Եւ կոչեաց դաւիթ զմի 'ի մանկտւոյն և ասէ. մատի՛ր՝ պատահեա՛ց դմա. և եհար զնա և մեռաւ : 16 *Եւ ասէ ցնա դաւիթ. արիւն քո 'ի գլուխ քո. զի բերան քո խօսեցաւ զքէն և ասէ. թէ ես սպանի զօծեալն տ՟ն : 17 *Եւ ողբաց դաւիթ զողբս զայս 'ի վ՟ր սաւուղայ և 'ի վերայ յովնաթանու որդւոյ նր՟ :
18 *Եւ ասաց դաւիթ ուսուցանել որդւոցն յուդայ աղեղնաւորութիւն : և ահա գրեալ է 'ի գիրս ուղղութեան : 19 *Արձանացի՛ր իէլ 'ի վերայ բլրոցն 'ի բարձունս քո վիրաւորաց : զիա՛րդ անկան զօրաւորքն : 20 *Մի՛ պատմէք 'ի գէթ. և մի՛ տայք զայդ աւետիս յելս ասկաղոնի : զի մի՛ երբէք ուրախ լիցին դստերք այլազգեացն. և մի՛ ցնծասցեն դստերք անթլփատիցն : 21 *Լերինք գեղբուէ՛այ. մի՛ իջցէ 'ի ձեզ ցօղ. և մի՛ եկեսցէ 'ի վերայ ձեր անձրև անդաստանք պտղոց : զի անդ ապականեցաւ վահան զօրաւորաց : վահանն սաւուղայ ո՛չ օծաւ իւղով : 22 *Յարենէ վիրաւորաց. և 'ի ճարպոյ զօրաւորաց : աղեղն յովնաթանու ո՛չ դարձաւ ունայն յետս : և սուրն սաւուղայ ո՛չ ա՟մ փոփեցաւ դատարկացեալ : 23 *Սաւուղ և յովնաթան սիրելիք : և գեղեցիկք և վայելուչք : չմեկնեալք 'ի կենդանութե՟ իւրեանց. և ո՛չ մեկնեցան 'ի մահուա՛ն իւրեանց : թեթևագոյնք քան զարծուիս : զօրացան առաւել քան զառիւծունս : 24 *Դստերք իղի լացէ՛ք 'ի վ՟ր սաւուղայ. լացէ՛ք 'ի վ՟ր նորա. որ զգեցուցանէր ձեզ կարմիրս՝ հանդերձ զարդու ձերով : որ արկանէր զարդս ոսկւոյ 'ի վ՟ր հանդերձից ձերոց : 25 *Օ՛րդ անկան զօրաւորքն 'ի մէջ պատերազմի : յովնաթան 'ի վ՟ր

26 բարձանց քոց վիրաւոր : *Ցաւէ ինձ 'ի վ՟ր քո եղբայր իմ յովնաթան : գեղեցկացար ինձ յոյժ : զարմանալի եղև սէր քո ինձ քան զսէր կանանց :
27 *Օ՛րդ անկան զօրաւորքն. և կորեան անօթքն պատերազմականք :

## Գլ: Բ.

1 Եւ եղև յետ այնորիկ և եհարց դաւիթ 'ի Տ՟է և ասէ. եթէ ելանիցեմ 'ի մի 'ի քաղաքացն յուդայ : և ասէ ցնա Տ՟ր՝ ել : և ասէ դաւիթ. յո՞ 2 ելից. և ասէ 'ի քեբրոն : *Եւ ել դաւիթ 'ի քեբրոն. և երկոքին կանայք նորա աքինովամ յեզրայելացի. և աբիգեա կին նաբաղու կարմելացւոյ :
3 *Եւ արքն զորս եհան դաւիթ իւրաքանչիւր տամբ իւրով. և բնակէին 'ի 4 քաղաքին քեբրոնի : *‖Եւ եկին արք հրէաստանի՝ և օծին անդ զդաւիթ թագաւորել 'ի վ՟ր տանն յուդայ. և պատմեցին դաւթայ և ասեն. եթէ արք յաբիսայ գաղաադացւոյ թաղեցին զսաւուղ : 5 *Եւ առաքեաց դաւիթ հրեշտակս առ առաջնորդս յաբիս գաղաադացւոց. և ասէ ցն՟ս դաւիթ. օրհնեալ էք դուք 'ի Տ՟է, զի արարէք դուք զգթութիւն զայն 'ի վերայ Տ՟ն ձերոյ սաւուղայ՝ օծելոյ Տ՟ն և թաղեցէք զնա (և զյովնաթան զորդի նորա :) 6 *Եւ արդ արասցէ Տ՟ր ընդ ձեզ ողորմութի՟ և ճշմարտութի՟. և ես հատուցից ձեզ զ՟ բարութե՟ն այնորիկ 7 զոր արարէք զբանն զայն : *Եւ արդ զօրասցին ձեռք ձեր. և լերո՛ւք յորդիս զօրութե՟. զի մեռաւ տէրն ձեր սաւուղ. և զիս էօծ տունն յուդայ 8 իւրեանց 'ի թագաւոր : *Եւ աբեններ որդի ներեայ զօրավար սաւուղայ էառ զյեբուսթէ զորդի սաւուղայ. 9 և տարաւ զնա 'ի բանակն : *Եւ թագաւորեցոյց զնա 'ի վ՟ր գաղաադաստանի. և 'ի վ՟ր թասիրայ. և 'ի վերայ յեզրայելի. և 'ի վ՟ր եփրեմի. և 'ի վ՟ր 10 բենիամինի. և 'ի վ՟ր ա՟մ իղի : *Եւ էր ամաց քառասնից յեբուսթէ որդի սաւուղայ յորժամ թագաւորեաց 'ի վերայ իղի. և երկուս ամս թագաւորեաց՝ բայց 'ի տանէն յուդայ՝ որք էին 11 զհետ դաւթի : *Եւ եղեն աւուրք զորս թագաւորեաց դաւիթ 'ի քեբրոն 'ի վ՟ր տանն յուդայ՝ ամք եօթն 12 և ամիսք վեց : *Եւ ել աբեններ որդի ներեայ՝ և ծառայք յեբուսթեայ որդւոյ սաւուղայ 'ի բանակացն 'ի գաբաւոն : 13 *Եւ յովաբ որդի շարուհեայ և ծառայք դաւթի ելին 'ի քեբրոնէ. և դիպեցան միմեանց 'ի վերայ աղբերն գա-

‖ 1. Մն. 2. 57.

գաբաւոնի. և նստան նոքա անտի աղբերն գաբաւոնի. և սոքա աստի ։ 14 *Եւ ասէ աբեններ ցյովաբ. յարիցեն մանկտիքդ և խաղասցեն առաջի մեր. և ասէ յովաբ՝ յարիցեն։ 15 *Եւ յարեան. և անցին թուով ՚ի մանկանցն բենիամինի երկոտասանք՝ յեբուսթեայ որդւոյ սաւուղայ ։ և ՚ի մանկանցն դաւթի երկոտասանք ։ 16 *Եւ կալան այր իւրաքանչիւր ձեռամբ ըզգլխոյ ընկերի իւրոյ. և սուր ՚ի կողս ընկերի իւրոյ. և անդէն անկանէին. և կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ վիճակ դաւաճանաց որ է ՚ի գաբաւոն։ 17 *Եւ եղև պատերազմ խիստ յոյժ յաւուր յայնմիկ. և պարտեցաւ աբեններ՝ և արք Իլի առաջի ծառայից դաւթի։ 18 *Եւ անդ էին երեք որդիքն շարուհեայ. յովաբ, աբեսսա, և ասայէլ. և ասայէլ թեթև էր ոտիւք իբրև զմի յայծեմանց ՚ի դաշտի ։ 19 *Եւ պնդեցաւ ասայէլ զհետ աբեններայ. և ո՛չ խոտորեցաւ յաջ և ո՛չ յահեակ ՚ի հետոց աբեններայ։ 20 *Եւ հայեցաւ աբեններ ՚ի թիկունս իւր և ասէ, եթէ դու իցես ասայէլ. և ասէ՝ ես եմ ։ 21 *Եւ ասէ ցնա աբեններ, խոտորեա՛ց դու յաջ կամ յահեակ. և կա՛լ քեզ մի ՚ի մանկտւոյդ. և ա՛ռ դու քեզ զսպառազինութի նր. և ո՛չ կամեցաւ ասայէլ խոտորիլ ՚ի հետոց նր ։ 22 *Եւ յաւել ևս աբեններ ասել ցասայէլ, ՚ի բա՛ց կաց յինէն. զի մի՛ հարից զքեզ ընդ գետին. և զի՞արդ ամբարձից զերեսս իմ առ յովաբ. և ո՞ւր լինիցի այն. դարձի՛ր առ յովաբ եղբայր քո ։ 23 *Եւ ո՛չ կամեցաւ թափել. և եհար զնա աբեններ նիզակաւն ընդ մնակուշտն. և ել նիզակն ընդ զկնա նորա. և անկաւ անդէն և մեռաւ ՚ի ներքոյ նր. և լինէր՝ որ միանգամ գայր ցտեղին ցայնուր անկաւ ասայէլ և մեռաւ, զտեղի առնոյր ։ 24 *Եւ պնդեցան յովաբ և աբեսսա զկնի աբեններայ. և արեն եմուտ. և նոքա մտին մինչև ցբլուրն ամմանայ. որ է յանդիման գայեայ. ընդ ճանապարհ անապատին գաբաւօնի ։ 25 *Եւ ժողովեցան որդիքն բենիամինի զկնի աբեններայ. և կացին ՚ի վր բլրոյ միոյ ։ 26 *Եւ կոչեաց աբեններ զյովաբ և ասէ. մի՛ թէ իսպառ ուտիցէ սուր. կամ եթէ ո՞չ գիտիցես զի դառնութի լինի վախճանն՝ մինչև ցերբ ոչ ասիցես ժողովրդեանն դառնալ ՚ի հետոց եղբարց իւրեանց։ 27 *Եւ ասէ յովաբ՝ կենդանի է Տր. զի եթէ քո չէր խօսեցեալ, յայգուէ իսկ ելանէր ամենայն իւրաքանչիւր զհետ եղբօր իւրոյ։ 28 *Եւ փող եհար յովաբ. և մեկնեցան ժողովուրդն ամենայն՝ և ո՛չ ևս պնդեցան զհետ Իլի. և ո՛չ ևս յաւելին պատերազմել։ 29 *Եւ աբեններ և արք նորա գնացին ընդ արևելս զգիշերն զայն ողջոյն. անցին ընդ յորդանան՝ և չոգան ընդ ամ ձգեալն. և եկին ՚ի բանակն ։ 30 *Եւ յովաբ դարձաւ յաբեններայ. և ժողովեաց զամ ժողովուրդն. և հանդէս եղև ծառայից դաւթի որք կոտորեցան՝ ինն և տասն առն՝ և ասայէլ ։ 31 *Եւ ծառայքն դաւթի հարին յորդւոցն բենիամինի. և յարանց աբեններայ երեք հարիւր և վաթսուն այր ։ 32 *Եւ բարձին զասայէլ. և թաղեցին զնա ՚ի գերեզմանի հօր իւրոյ ՚ի բեթղեհէմ. և գնացին յովաբ և արք նորա. և լուսացաւ նոցա ՚ի քեբրոն ։

(Margin: անապատն)

## ԳԼ: Գ:

1 Եւ էր պատերազմ սաստիկ ՚ի մէջ տանն սաւուղայ՝ և ՚ի մէջ տանն դաւթի. և տունն դաւթի երթայր և զօրանայր, և տունն սաւուղայ երթայր և տկարանայր ։ 2 *‖Եւ ծնան դաւթի որդիք ՚ի քեբրոն. անդրանիկ նորա՝ ամնոն յաքինոամայ յեզրայելացւոյ ։ 3 *Եւ երկրորդ նորա՝ դալուիա յաբիգեայ կարմեղացւոյ. և երրորդ՝ աբիսաղոմ, ՚ի մաաքեայ դստերէ թողմեայ արքայի գեսուրայ ։ 4 *Եւ չորրորդ ադոնիա որդի ագգիթայ ։ և հինգերորդ՝ սափատիա որդի աբիտալայ ։ 5 *Եւ վեցերորդ՝ յեթրամ յեգղաթայ կնոջէ դաւթի. սոքա ծնան դաւթի ՚ի քեբրոն ։ 6 *Եւ եղև ՚ի լինել պատերազմին ՚ի մէջ տանն սաւուղայ և ՚ի մէջ տանն դաւթի. և աբեններ ունէր զտունն սաւուղայ։ 7 *Եւ սաւուղայ էր հարճ մի, որում անուն էր ռեսփա՝ դուստր յուղայ. և ասէ յեբուսթէ որդի սաւուղայ ցաբեններ ։ 8 *Ընդէ՞ր մտանես դու առ հարճ հօր իմոյ. և բարկացաւ աբեններ յոյժ վն բանին յեբուսթեայ. և ասէ ցնա աբեններ. մի՛թէ շան գլուխ իցեմ ես՝ որ արարի ողորմութի այսօր ՚ի վերայ տանն սաւուղայ հօր քոյ. և ՚ի վերայ եղբարց և ՚ի վր բարեկամաց. և ո՛չ եղէ անձնատուր ՚ի տունն դաւթի. և խնդրես այսօր յինէն վրէժ կնոջ միոյ։ 9 *Օն և օն արասցէ Ած աբեններայ և օն և օն յաւելցէ նմա. եթէ ոչ ոպ երդուաւ Տր դաւթի, այնպէս արարից նմա։ 10 *Փոխանել զթագաւորութիւն սաւուղայ. և կանգնել զթագաւորութիւն դաւթի ՚ի վերայ Իլի և ՚ի

(Margin: ‖1. Մնա 3. 1.)

վր

վ՟ յուդայ՝ 'ի դանայ մինչև ցբերսաբէէ։ 11 *Եւ ոչ ևս կարաց յեբուսթէ տալ պատասխանի աբեններայ բան մի յերկիւղէն։ 12 *Եւ առաքեաց աբեններ հրեշտակս առ դաւիթ 'ի թեղամու երկիր առ ժամայն. և ասէ. ուխտեա՛ ընդ իս զուխտ քո. և ահա ձեռն իմ ընդ քեզ դարձուցանել առ քեզ զա՟մ տունն ի՟ղի։ 13 *Եւ ասէ դաւիթ բարւոք է. ես ուխտեցից ը՟ քեզ ուխտ. բայց բան մի ես խնդրեմ 'ի քէն, մի՛ տեսցես զերեսս իմ. եթէ ոչ ածցես զմեղքող դուստր սաւուղայ 'ի գալն քում տեսանել զերեսս իմ։ 14 *Եւ առաքեաց դաւիթ առ յեբուսթէ որդի սաւուղայ հրեշտակս և ասէ տուր ցիս զկին իմ զմեղքող. զոր առի ես ընդ հարիւր անթլփատութեց այլազգեացն։ 15 *Եւ առաքեաց յեբուսթէ՝ և էառ զնա յառնէ իւրմէ փաղտիելէ որդւոյ սելլայ։ 16 *Եւ երթայր այր նորա զհետ նորա. և լայր մինչև ցբարակիմ. և ասէ ցնա աբեններ երթ դարձիր. և դարձաւ։ 17 *Եւ խօսեցաւ աբեններ ը՟ ծերս ի՟ղի և ասէ. երէկ և եռանդ խնդրէիք զդաւիթ թագաւորել 'ի վ՟ ձեր։ 18 *Եւ արդ արարէք. զի Տ՟ր խօսեցաւ վասն դաւթի և ասէ. ձեռամբ ծառայի իմոյ դաւթի փրկեցից զի՟էլ՝ 'ի ձեռաց այլազգեացն և 'ի ձեռաց ա՟մ թշնամեաց իւրեանց։ 19 *Եւ խօսեցաւ աբեններ յականջս բենիամինի. և գնաց աբեններ խօսել յականջս դաւթի 'ի քեբրոն զա՟մ ինչ որ հաճոյ թուեցաւ յաչս ի՟էլի. և յաչս ամենայն տանն բենիամինի։ 20 *Եւ եկն աբեններ առ դաւիթ 'ի քեբրոն, և ընդ նմա քսան այր. և արար դաւիթ աբեններայ և արանցն որք ընդ նմա, խրախութիւն։ 21 *Եւ ասէ աբեններ ցդաւիթ. յարեայց և գնացից և ժողովեցից առ տէր իմ արքայ զա՟մ ի՟էլ. և ուխտեսցեն ընդ քեզ ուխտ. և թագաւորեսցես 'ի վ՟ ամենեցուն որոց ցանկայ անձն քո։ 22 *Եւ առաքեաց դաւիթ զաբեններ. և գնաց խաղաղութ՟բ։ 23 *Եւ ահա ծառայք դաւթի և յովաբ եկին յասպատակէ. և աւար բազում ածին ընդ իւրեանս. և յովաբ չէր ընդ դաւթի 'ի քեբրոն յորժամ արձակեաց զնա և գնաց խաղաղութ՟բ։ 24 *Եւ յովաբ և ամենայն զօր ն՟ր եկին. և ազդ եղև յովաբայ և ասեն. եկն աբեններ որդի ներեայ առ դաւիթ. և արձակեաց զնա՝ և գնաց խաղաղութ՟բ։ 25 *Եւ եմուտ յովաբ առ դաւիթ արքայ՝ և ասէ. զի՞նչ գործեցեր զայդ. զի եկն աբեններ առ քեզ. և ընդէ՞ր արձակեցեր զնա խաղաղութ՟բ։

26 *Եթէ ո՛չ գիտիցես զչարութիւն աբեններայ որդւոյ ներեայ. զի խաբել զքեզ եկն՝ և իմանալ զմուտ և զել քո. և տեղեկանալ ա՟մի զինչ և գործիցես։ 27 *Եւ ել յովաբ 'ի դաւթէ. և արձակեաց հրեշտակս զկնի աբեններայ. և դարձուցին զնա 'ի ջրհորոյ անտի սեիրայ. և դաւիթ ո՛չ գիտէր։ 28 *‖ Եւ դարձոյց զաբեններ 'ի քեբրոն. և խոտորեցոյց զնա յովաբ 'ի կողմանց դրանն խօսել ը՟ նմա դաւաճանութ՟բ. և եհար ընդ անակութն՝ և մեռաւ՝ վ՟ն արեանն ասայելի եղբօր յովաբայ։ 29 *Եւ լուաւ դաւիթ յետ այնորիկ և ասէ. անպարտ եմ ես՝ և թագաւորութի՟ն իմ 'ի Տ՟է մինչև ցյաւիտեան՝ յարենէ աբեններայ որդւոյ ներեայ։ 30 *Հասցեն 'ի գլուխ յովաբայ և 'ի վերայ տան հօր նորա. և մի՛ պակասեսցի 'ի տանէն յովաբայ սերմնակաթն. և բորոտ՝ և մուրօղ՝ որ շրջիցի 'ի ցպոյ. և սրամահ, և սովամահ։ 31 *Եւ յովաբ և աբեսսա եղբայր նորա սպանէին աբեններայ. փոխանակ զի սպան զասայէլ զեղբայր նոցա 'ի գաբաւոն 'ի պատերազմին։ 32 *Եւ ասէ դաւիթ ցյովաբ. և ցամենայն ժողովուրդն որ ընդ նմա. պատառեցէք զհանդերձս ձեր. և զգեցարո՛ւք քուրձ. և կոծեցարո՛ւք առաջի աբեններայ. և արքայ դաւիթ երթայր զհետ դագաղացն։ 33 *Եւ թաղեցին զաբեններ 'ի քեբրոն. և ամբարձ արքայ զձայն իւր. և ելաց 'ի վերայ գերեզմանի ն՟ր. և ելաց ամենայն ժողովուրդն 'ի վ՟ր աբեններայ։ 34 *Եւ էառ ողբս արքայ 'ի վերայ աբեններայ. և ասէ՝ մի թէ որպէս մեռանիցի անզգամ՝, մեռաւ աբեններ։ 35 *(Եթէ ըստ մահուան նաբաղայ մեռաւ աբեններ։) ձեռք քո ոչ կապեցան. և ոտք քո ո՛չ ախեցան 'ի շղթայս. և ո՛չ մերձեար իբրև զնաբաղ առաջի որդւոց անիրաւութ՟ե՝ և անկար. և ժողովեցան ամենայն ժողովուրդն լալ զնա։ 36 *Եւ եկն ա՟մ ժողովուրդն տալ ընթրիս դաւթի՝ մինչդեռ աւուր կայր. և երդուաւ դաւիթ և ասէ. օ՛ն և օ՛ն արասցէ ինձ ա՟ծ՝ և օ՛ն և օ՛ն յաւելցէ. եթէ ոչ մտանիցէ արեգակն. և ապա ճաշակեցից հաց. և կամ զայլ ինչ ա՟մ։ 37 *Եւ գիտաց ամենայն ժողովուրդն. և հաճոյ թուեցաւ առաջի նոցա ա՟մ ինչ, զոր արար արքայ առաջի ժողովրդեանն զբարութի՟ն։ 38 *Եւ գիտաց ամենայն ժողովուրդն և ա՟մ ի՟էլ յաւուր յայնմիկ՝ եթէ ո՛չ յարքայէ եղև սպանանել

Գ. Թագ. 2. 5.

նել զաբեններ որդի ներեայ : 39 * Եւ աւէ արքայ ցծառայսն իւր . ո՛չ գիտէք եթէ առաջնորդ մեծ անկաւ յաւուր յայսմիկ յիէլէ : 40 * Եւ զի սա ազգական է այսօր , և յարքայէ կացուցեալ է . և արք այդոքիկ որդիք շարուհեայ , խստագոյնք քան զիս են . հատուսցէ Տր չարին ըստ չարութե իւրում :

## ԳԼ. Դ.

1 Եւ լուաւ յեբուսթէ եթէ մեռաւ աբեններ 'ի քեբրոն . լուծան ձեռք իւր . և ամ արք իէլի լքան : 2 * Եւ արք երկու գլխաւորք 'ի գնդիցն յեբուսթեայ որդւոյ սաւուղայ , անուն միումն բաանա . և անուն երկրորդին ռեքաբ . որդիք ռեմնայ բերովթացւոյ , յորդւոցն բենիամինի . զի և բերովթ յորդւոցն բենիամինի 'ի համարի էր : 3 * Եւ փախեան բերովթացիքն 'ի գեթթայի . և էին անդ պանդխտացեալք մինչև ցայսօր : 4 * Եւ յովնաթանու որդւոյ սաւուղայ՝ էր որդի մի հաշմոտիք՝ որդի ամաց հնգից . և զնա 'ի հասանել գուժին սաւուղայ , և յովնաթանու որդւոյ նր յեզրայելէ էառ դայեակ իւր և փախեաւ . և եղև ընդ փութալն իւրում 'ի գաղթել՝ անկաւ և կաղացաւ . և անուն նորա մեմփիբոսթէ : 5 * Եւ գնացին որդիք ռեմնայ բերովթացւոյ՝ ռեքաբ և բաանա . և մտին 'ի տօթաժամու աւուրն 'ի տուն յեբուսթեայ . և նա ննջէր յանկողնի 'ի հասարակ աւուր : 6 * Եւ բարապան տանն սրբէր ցորեան . և նիրհեաց և 'ի քուն եմուտ . և ռեքաբ և բաանա եղբարք զօղեցան : 7 * Եւ մտին 'ի տունն . և յեբուսթէ ննջէր 'ի գահոյս իւրում 'ի սենեկի . և հարին զնա . և սպանին . և հատին զգլուխ նր . և առին զգլուխն . և գնացին զճանապարհն արևելից՝ զամենայն գիշերն : 8 * Եւ բերին զգլուխն յեբուսթեայ առ դաւիթ 'ի քեբրոն . և ասեն ցարքայ . ահա գլուխ յեբուսթեայ որդւոյ սաւուղայ թշնամւոյ քոյ . որ խնդրէր զանձն քո . և Տր ետ տեառն մերում արքայի վրէժխնդրութիւն 'ի թշնամեաց իւրոց . որպէս յաւուր յայսմիկ 'ի սաւուղայ թշնամւոյ քումմէ՝ և 'ի զաւակէ նորա : 9 * Եւ պատասխանի ետ դաւիթ ռեքաբայ և բաանայ եղբօր նր որդւոց ռեմնայ բերովթացւոյ . և ասէ ցնոսա . կենդանի է Տր որ փրկեաց զանձն իմ յամ նեղութենէ : 10 * ‖ Զի որ պատմեաց ինձ թէ մեռաւ սաւուղ . և նմա թուէր եթէ աւետիս տայցէ առաջի իմ . կալայ՝ և սպանի զնա 'ի սիկելակ . որում օրէն էր ինձ տալ աւետչեայ : 11 * Եւ արդ՝ արք չարք սպանիք զայր արդար 'ի տան իւրում յանկողնի . և արդ խնդրեցից զարիւն նորա 'ի ձեռաց ձերոց . և սատակեցից զձեզ յերկրէ : 12 * Եւ հրաման ետ դաւիթ մանկտւոյ իւրում , և սպանին զնս . և կտրեցին զձեռս և զոտս նոցա . և կախեցին 'ի վր ջրհորին 'ի քեբրոն . և զգլուխն յեբուսթեայ թաղեցին 'ի գերեզմանի աբեններայ որդւոյ ներեայ 'ի քեբրոն :

‖ Վեր. 1.14.

## ԳԼ. Ե.

1 Եւ եկին ամենայն ցեղքն իէի առ դաւիթ 'ի քեբրոն . խօսեցան և ասեն . ‖ ահաւասիկ ոսկերք քո և մսմինք քո եմք : 2 * Եւ երեկն և յեռանդ մինչ էր սաւուղ թագաւոր 'ի վերայ մեր , դու էիր որ մուծանէիր և հանէիր զիէլ . և ասաց քեզ Տր ‖ հովուեսցես ժողովրդեան իմոյ իէի . և դու լիցիս յառաջնորդ 'ի վերայ իէի : 3 * Եւ եկին ամ ծերքն իէի առ արքայ 'ի քեբրոն . և ուխտեաց ընդ նս ուխտ արքայ դաւիթ 'ի քեբրոն առաջի Տն և օծին զդաւիթ թագաւոր 'ի վերայ ամենայն իէի : 4 * ‖ Որդի ամաց երեսնից դաւիթ 'ի թագաւորել իւրում . և քառասուն ամ թագաւորեաց : 5 * Եօթն ամ և վեց ամիս թագաւորեաց 'ի քեբրոն 'ի վերայ յուդայ . և երեսուն և երիս ամս թագաւորեաց 'ի վերայ ամ իէի և յուդայ յէմ : 6 * Եւ չոգաւ դաւիթ և արք նորա յերուսաղէմ առ յեբուսացին՝ բնակեալ յերկրին . և ասացաւ դաւթի՝ թէ ո՛չ մտցես դու այսր . քանզի ընդդէմ դարձան կոյրք և կաղք՝ և ասեն . մի՛ մտցէ այսր դաւիթ : 7 * Եւ էառ դաւիթ զսիոն և զամրոց նր . այն է քաղաք դաւթի : 8 * Եւ ասէ դաւիթ յաւուր յայնմիկ . ամենայն որ հարկանիցէ սրով զյեբուսացին . և մատիցէ սրով 'ի կաղսն և 'ի կոյրս՝ յատելիս անձին դաւթի . վս այնորիկ ասեն . կոյրք և կաղք մի՛ մտցեն 'ի տուն Տն : 9 * Եւ նստաւ դաւիթ յամրոցին . և կոչեցաւ այն քաղաք դաւթի . և շինեաց զնա քաղաք դաւիթ . շուրջանակի ծագէ 'ի ծագ՝ և զտունն իւր : 10 * Եւ երթալով երթայր դաւիթ , և մեծանայր . և Տր ամենակալ էր ընդ նմա : 11 * ‖ Եւ առաքեաց քիրամ արքայ տիւրոսի հրեշտակս առ դաւիթ՝ և փայտս եղևնեայս . և հիւսունս փայտից և ճարտարապետս քարանց . և շինեցին տուն դաւթի :

‖ 1. Մնաց. 11.1.
‖ Սաղմ. 77. 71.
‖ 3 Թագ. 2.11.
‖ 1. Մնաց. 14.1.

* Եւ

12 *Եւ գիտաց Դաւիթ եթէ հաստատեաց զնա Տր թագաւոր 'ի վր Իղի. և թէ բարձրացաւ թագաւորութիւն նորա վն ժողովրդեան նր Իսրայէլի։

13 *Եւ էառ ևս Դաւիթ կանայս և հարճս յԵրուսաղեմէ՝ յետ գալոյ նր 'ի Քեբրոնէ, և եղեն Դաւթի այլևս ուստերք և դստերք։ (Ա.Մն. 3.1, և 2.)

14 *Եւ այս են անուանք ծնելոց որդւոց նր յԵրուսաղեմ. Սամմաթ, Յեսիբաթ՝ Նաթան՝ Սաղամոն։ 15 *Յեբաար՝ Եղիսուս՝ Եղիփալաթ՝ Նագեթ՝ Նափեկ։ 16 *Յենևաթ՝ Եղիսամիս՝ Բաղիդաթ՝ Եղիփաղէթ։

17 *Եւ լուան այլազգիքն եթէ օծեալ է Դաւիթ թագաւոր 'ի վերայ Իղի. և ելին ամ այլազգիքն խնդրել զԴաւիթ. և լուաւ Դաւիթ և էջ յամրոցն։ (Ա.Մն. 14.8.11 և 16.) 18 *Եւ այլազգիքն եկին և հասին. և խռնեցան 'ի հովիտս տիտանացն։ 19 *Եւ եհարց Դաւիթ 'ի Տե և ասէ. եթէ ելից 'ի վերայ այլազգեացն. և մատնիցես զնս 'ի ձեռս իմ. և ասէ Տր ցԴաւիթ՝ Ել. զի մատնելով մատնեցից զայլազգիսն 'ի ձեռս քո։

20 *Եւ եկն Դաւիթ 'ի վերուստ խրամատիցն. և կոտորեաց անդ զայլազգիսն. և ասէ Դաւիթ. Տր խրամատեաց զթշնամիս իմ առաջի իմ. որպէս խրամատին ջուրք։ Վն այնորիկ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ 'ի վր խրամատից։ (Եսայ. 28. 21.) 21 *Եւ թողին անդ զաստուածս իւրեանց. և էառ զնոսա Դաւիթ՝ և արքն որք ընդ նմա։

22 *Եւ յաւելին այլազգիքն միւսանգամ ելանել. և գումարեցան 'ի հովիտս տիտանացւոց։ 23 *Եւ եհարց Դաւիթ 'ի Տե և ասէ. եթէ ելից 'ի վր այլազգեացն՝ և մատնեսցես զնոսա 'ի ձեռս իմ. և ասէ Տր. մի՛ ելաներ ընդդէմ նոցա, դարձիր 'ի նոցանէ. և եկեսցես 'ի թևէ նոցա մօտ 'ի լալոնսն։ 24 *Եւ եղիցի յորժամ լուիցես զձայն շարժման անտառին լալոնից, յայնժամ իջցես առ նոսա. քանզի յայնժամ ելցէ Տր առաջի քո կոտորել 'ի պատերազմի այլազգեացն։ 25 *Եւ արար Դաւիթ որպէս և հրաման ետ նմա Տր. և եհար զայլազգիսն 'ի Գաբաւոնէ մինչև ցԳազեր։

## ԳԼ. Զ.

1 Եւ ժողովեաց միւսանգամ Դաւիթ զամ երիտասարդս յԻղէ իբրև եօթանասուն հազար։ 2 *Եւ յարեաւ՝ և գնաց Դաւիթ՝ և ամ ժողովուրդ նորա ընդ նմա յիշխանացն Յուդայի զառիվերն. ընդ որ ել տապանակն Այ. յորոյ վր կոչեցաւ անուն Տն Այ զօրութեանց. որ նստի 'ի քերովբէս 'ի վերայ նր։ (Ա.Մն. 13.5.)

3 *Եւ եհան և եդ զտապանակն Տն 'ի վր սայլի նորոյ. 4 *Եւ էառ զնա 'ի տանէ Ամինադաբայ բլրացւոյ. և Ոզա և եղբարք նորա որդիք Ամինադաբայ՝ վարէին զսայլն հանդերձ տապանակաւն. և եղբարք նորա երթային առաջի տապանակին։ (Ա Թագ. 7. 1.) 5 *Եւ Դաւիթ և որդիքն Իսրայէլի խաղային առաջի Տն, տաւղօք և նուագարանօք՝ զօրութեամբ. և երգովք. և քնարօք. և սրնգօք. և թմբկօք. և ծնծղայիւք. և փողօք։

6 *Եւ եկին մինչև ցկալն Ամինադաբայ. և ձգեաց Ոզա զձեռն իւր 'ի տապանակն Այ ունել զնա. և կալաւ զնա. զի թիւրեաց զնա զուարակն յունելոյ անտի զնա։ 7 *Եւ բարկացաւ Տր Ոզայ. և եհար զնա անդ Այ վասն յանդգնութեան. և մեռաւ անդէն առ տապանակին Տն առաջի Այ։ 8 *Եւ տրտմեցաւ Դաւիթ՝ զի խրամատեաց Տր 'ի խրամատութիւն Ոզայ. և կոչեցաւ տեղին այն խրամատութիւն Ոզայ՝ մինչև ցայսօր։ (Ա.Մն. 13.11.) 9 *Եւ երկեաւ Դաւիթ 'ի Տե յաւուր յայնմիկ և ասէ. զիա՞րդ մտանիցէ առ իս տապանակդ Այ։ 10 *Եւ ոչ կամեցաւ Դաւիթ տանել առ ինքն զտապանակն ուխտին Տն 'ի քաղաքն Դաւթի. և խոտորեցոյց զնա Դաւիթ 'ի տունն Աբեդդարայ գեթացւոյ։

11 *Եւ նստաւ տապանակն Տն 'ի տան Աբեդդարայ գեթացւոյ ամիսս երիս. և օրհնեաց Տէր զԱբեդդար և զամ տուն նորա։ 12 *Եւ պատմեցին Դաւթի և ասեն՝ օրհնեաց Տէր զտունն Աբեդդարայ՝ և զամենայն ինչ որ նր վասն տապանակին Այ. և չոգաւ Դաւիթ և եհան զտապանակն Տն 'ի տանէ Աբեդդարայ 'ի քաղաք Դաւթի ուրախութեամբ։ (Ա.Մն. 15.25.) 13 *Եւ էին է նմա. որք բառնային զտապանակն, եօթն դասս պարուց. և սպանդ զուարակի և գառանց։ (Ա.Մն. 15.26.) 14 *Եւ Դաւիթ հարկանէր զտաւիղս նուագարանացն առաջի Տն. և էր Դաւիթ զգեցեալ պատմուճան հանդերձեալ։ 15 *Եւ Դաւիթ՝ և ամ տունն Իսրայէլի հանէին զտապանակն Տն հռչակաւ և ձայնիւ փողոյ։ 16 *Եւ եղև 'ի հասանել տապանակին 'ի քաղաքն Դաւթի, և Մեղքող դուստր Սաւուղայ հայէր ընդ պատուհանն. և ետես զԴաւիթ արքայ՝ զի կաքաւէր՝ զնուագարանան առաջի Տն. անգոսնեաց զնա 'ի սրտի իւրում։ (և հայ. չանէր)

17 *Եւ բերին զտապանակն Տն. և եդին զնա 'ի տեղւոջ իւրում 'ի մէջ խորանին. զոր եհար նմա Դաւիթ. և մատոյց Դաւիթ ողջակէզս առաջի Տն և խաղաղականս։

*Եւ

1. Մնաց. 16.2.

18 * Եւ իբրեւ կատարեաց դաւիթ մատուցանել զողջակէզսն եւ զխաղաղականսն՝ օրհնեաց զժողովուրդն յանուն ՏՆ զօրութեանց ։ 19 * Եւ բաշխեաց ամ ժողովրդեանն . յամենայն զօրութե Իղի 'ի դանայ մինչեւ ցբերսաբէէ . յառնէ մինչեւ ցկին իւրաքանչիւրումեք բլիթ մի հացի . եւ պատառ մի 'ի կասկարայից . եւ քաքար մի 'ի տապակէ . եւ գնաց ամենայն ժողովուրդն իւրաքանչիւրոք 'ի տուն իւր ։ 20 * Եւ դարձաւ դաւիթ օրհնել զտուն իւր . եւ ել մեղքող դուստր սաւուղայ ընդ առաջ դաւթի . եւ օրհնեաց զնա եւ ասէ . քանի՞ փառաւորեալ էր այսօր արքայ Իղի . որ հոլանեցաւ այսօր առաջի աղախնաց եւ ծառայից իւրոց . զոր օրինակ հոլանիցի հոլանելով մի ոք 'ի կաքաւչաց ։ 21 * Եւ ասէ դաւիթ ցմեղքող . առաջի ՏՆ կաքաւեցից . օրհնեալ է Տր ԱԾ . որ ընտրեաց զիս քան զհայր քո . եւ քան զամ տունն նր . եւ կացոյց զիս քան զհայր քո՝ եւ քան զամենայն տուն նորա . եւ կացոյց զիս առաջնորդ 'ի վր ժողովրդեան իւրոյ Իղի ։ 22 * Եւ խաղացից՝ եւ կաքաւեցից առաջի ՏՆ . եւ հոլանեցայց սոյնպէս եւս քան զեւս . եւ եղէց անպիտան յաչս քո ։ եւ ընդ աղախնայս ընդ որս ասացեր փառաւորիլ . փառաւորեցայց ։ 23 * Եւ մեղքողայ դստեր սաւուղայ ոչ եղեւ որդի մինչեւ ցօր մահուան իւրոյ ։

## ԳԼ. Է.

1. Մնաց. 17.1.

1 Եւ եղեւ յորժամ նստաւ դաւիթ 'ի տան իւրում . եւ Տր հանգոյց զնա յամ թշնամեաց իւրոց շուրջանակի ։ 2 * Եւ ասէ արքայ ցնաթան մարգարէ . Ահաւասիկ ես բնակեալ եմ 'ի տան եղեւնափայտից ։ եւ տապանակն ԱԾ շրջիցի 'ի մէջ խորանի ։ 3 * Եւ ասէ նաթան ցարքայ . զամ որ ինչ իցէ 'ի սրտի քում, երթ՝ եւ արա . զի Տր ընդ քեզ է ։ 4 * Եւ եղեւ 'ի գիշերին յայնմիկ . եղեւ բան ՏՆ առ նաթան եւ ասէ ։ 5 * Երթ՝ եւ ասա ցծառայ իմ դաւիթ . այսպէս ասէ Տէր . ո՛չ շինեսցես դու ինձ տուն բնակելոյ ։ 6 * Զի ոչ բնակեցայ 'ի տան՝ յօրէ յորմէ հանէ հանի զորդիսն Իղի յեգիպտոսէ մինչեւ ցայս օր ։ եւ շրջէի յիջավանի խորանաւ ։ 7 * Ամենայն ուրեք՝ ուր շրջէի 'ի մէջ ամ Իղի, եթէ խօսելով խօսեցա՞յ երբէք ընդ միում ցեղի Իղի՞ ում եւ հրաման ետու հովուել զժողովուրդ իմ զԻղ . ասել եթէ ընդէ՞ր ոչ շինեցէք ինձ տուն եղեւնափայտեայ ։ 8 * Եւ արդ այսպէս ասասցես ցծառայ իմ

ԸՂ

1 Թագ. 16. 11.

Սաղմոս. 77. 70.

դաւիթ . այսպէս ասէ Տր ամենակալ . Առի ես զքեզ 'ի վանաց հօտից . լինել քեզ յառաջնորդ 'ի վր ժողովրդեան իմոյ Իղի ։ 9 * Եւ էի ընդ քեզ յամ ուրեք ուր եւ երթայիր ։ եւ սատակեցի զամ թշնամիս քո յերեսաց քոց . եւ արարի զքեզ անուանի ըստ անուանց մեծամեծաց . որք 'ի վր երկրի ։ 10 * Եւ եդից տեղի ժողովրդեան իմոյ Իղի . եւ տնկեցից զնա . եւ բնակեսցի առանձինն . եւ մի եւս հոգասցի . եւ ոչ եւս յաւելցի որդի անօրէնութե լլկել զնա իբրեւ զառաջինն ։ 11 * Յաւուրցն յորոց կարգեցի դատաւորս 'ի վերայ ժողովրդեան իմոյ Իղի, հանգուցից զքեզ յամ թշնամեաց քոց . եւ պատմեսցէ քեզ Տէր՝ զի շինեսցես նմա տուն ։ 12 * Եւ եղիցի եթէ լցցին աւուրք քո՝ եւ ննջեսցես ընդ հարս քո , յարուցից զզաւակ քո . որ եղիցի յորովայնէ քումմէ . եւ պատրաստեցից զարքայութի քո նմա ։ 13 * Եւ նա շինեսցէ տուն անուան իմոյ . եւ կանգնեցից զաթոռ նր մինչեւ ցյաւիտեան ։ 14 * Ես եղէց նմա 'ի հայր . եւ նա եղիցի ինձ յորդի . եւ եթէ եկեսցէ անիրաւութի նորա, յանդիմանեցից զնա . եւ խրատեցից զնա գաւազանաւ արանց . եւ տանջանօք որդւոց մարդկան ։ 15 * Բայց զողորմութի իմ ոչ մերժեցից 'ի նմանէ . ո՛ր մերժեցի յորոց մերժեցի առաջի երեսաց իմոց ։ 16 * Հաւատարիմ լիցի անուն նր . եւ արքայութի նորա առաջի իմ մինչեւ ցյաւիտեան ։ Եւ աթոռ նր կացցէ կանգուն առաջի իմ յաւիտեան ։ 17 * Ըստ ամենայն բանիցս այսոցիկ . եւ ըստ ամ տեսլեանս այսորիկ . սոյնպէս խօսեցաւ նաթան ընդ դաւթայ ։ 18 * Եւ եմուտ արքայ դաւիթ՝ եւ նստաւ առաջի ՏՆ ։ եւ ասէ . ո՞վ եմ ես Տր իմ Տր . եւ ո՛ տուն իմ, զի սիրեցեր զիս մինչեւ ցայդ վայր ։ 19 * Եւ ոչ փոքրկացայ սակաւիկ առաջի քո Տր իմ Տր ։ եւ խօսեցար վասն տան ծառայի քոյ երկար . եւ այս է օրէն մարդոյ Տր իմ Տր ։ 20 * Եւ զի՞ եւս յաւելուցու դաւիթ խօսիլ առ քեզ ։ եւ դու գիտես զծառայ քո Տր իմ Տր ։ 21 * Վն ծառայի քոյ արարեր . եւ ըստ ամ սրտի քոյ արարեր զամ զմեծութիս զայս ծանուցանել ծառայի քում ։ 22 * Վն մեծացուցանելոյ զիս Տէր իմ Տր ։ զի չիք ոք իբրեւ զքեզ . եւ չիք ԱԾ բաց 'ի քէն 'ի վր ամի . զոր լուաք ականջօք մերովք ։ 23 * Եւ ո՞վ է ազգ 'ի վերայ երկրի իբրեւ զժողովուրդ քո զԻղ . որում առաջնորդեաց ԱԾ . փրկել իւր ժողովուրդ . դնել քեզ անուն .

3 Թագ. 8.19.

3 Թագ. 5. 5.

1. Մնաց. 22.10.

Եբրայ. 1. 5.

Սաղմ. 88.4. եւ 37.

Եբրայ. 1. 8.

Վն բանի քոյ

Nn Եւ

և առնել քեզ մեծութիւն և յայտնութիւն․ մերժել քեզ յերեսաց ժողովրդեանս քոյ․ զոր փրկեցեր դու քեզ յեգիպտոսէ, զազգս և զխնամութիւնս։ * Եւ պատրաստեցեր դու քեզ զժողովուրդ քո զԻէլ 'ի ժողովուրդ մինչև ցյաւիտեան․ և դու Տր եղեր նցյ Ա.Ծ։ * Եւ արդ Տր իմ, զբանն զոր խօսեցար վս ծառայի քոյ և տան նորա, հաւատարիմ արա մինչև յաւիտեան․ և արա որպէս և խօսեցար։ * Եւ մեծասցի անուն քո մինչև ցյաւիտեան՝ և արդ Տր ամենակալ․ Ա.Ծ 'ի վր իմ Իէլի․ տուն ծառայի քոյ դաւթի եղիցի կանգուն առաջի քո։ * Զի դու ես Տր ամենակալ Ա.Ծ Իէլի։ (և արդ ոչ խօսեցար, մեծասցի անուն քո մինչև ցյաւիտեան։ ասէ, Տր ամենակալ Ա.Ծ Իէլի,) յայտնեցեր յունկն ծառայի քոյ, և ասացեր՝ շինեցից քեզ տուն։ Վս այնորիկ եգիտ ծառայ քո զսիրտ իւր՝ կալ առ քեզ յաղօթս՝ զաղօթս զայսոսիկ։ * Եւ արդ Տր իմ՝ Տր․ դու ես Ա.Ծ․ և բանք քո եղիցին ճշմարիտ․ և զոր խօսեցար վասն ծառայի քոյ զամ բարութիւս զայս։ * Եւ արդ սկսի՛ր օրհնել զտուն ծառայի քոյ լինել առաջի քո յաւիտեան։ զի դու Տր իմ Տր, խօսեցար․ և յօրհնութենէ քումմէ օրհնեսցի տուն ծառայի քոյ յաւիտեան։

## Գլ: Ը:

Ա.Մնաց. 18.1.

Եւ ‖ եղև յետ այսորիկ եհար դաւիթ զայլազգիսն և վանեաց զնս․ և էառ դաւիթ զզատուցեալսն 'ի ձեռաց այլազգեացն։ * Եւ եհար դաւիթ զմովաբ․ և չափեաց զնոսա պարանօք․ և դառացոյց զնս յերկիր․ և եղեն երկու պարանքն սպանանելոյ․ և երկու պարանք ապրեցուցանելոյ։ և եղև մովաբ դաւթի 'ի ծառայս պատարագաբերս։ * Եւ եհար դաւիթ զադրաազար զորդի ռոհովբայ՝ զարքայ սուբայ, յերթալ նր արկանել զձեռն իւր 'ի վերայ գետոյն եփրատայ։ * Եւ էառ զնորա դաւիթ հազար կառս․ և եօթն հազար հեծելոց․ և քսան հազար հետևակաց։ և քակեաց դաւիթ զամ կառսն․ և եթող իւր 'ի նոցանէ հարիւր կառս։ * Եւ գայր ասորին 'ի դամասկոսէ օգնել ադրաազարայ արքայի սուբայ։ և եհար դաւիթ յասորւոցն քսան և երկուս հազարս արանց։ * Եւ եդ դաւիթ պահապանս յասորիս հանդէպ դամասկոսի։ և եղեն ասորիք դաւթի 'ի ծառայս պատարագաբերս։ և փրկեաց Տր զդաւիթ յամ ուրեք ուր և երթայր։ * Եւ էառ դաւիթ զապարանջանսն ոսկիս՝ որք էին 'ի ծառայսն ադրաազարու արքայի սուբայ՝ և եբեր յերուսաղէմ։ (և էառ զայն սուսակիմ արքայ եգիպտացւոց յելանելն իւրում յէմ յաւուրս ռոբովամայ որդւոյ սողոմոնի։) * Եւ 'ի մասբակայ էառ արքայ դաւիթ յընտիր ընտիր քաղաքաց ադրաազարայ պղինձ․ որով արար սողոմոն զծովն պղնձի․ և զսիւնսն․ և զաւազանսն․ և զամ կահն։ * Եւ լուաւ թովու արքայ եմաթայ, եթէ եհար դաւիթ զամ զօրն ադրաազարայ։ * Եւ առաքեաց թովու զյեդդուրամ զորդի իւր առ արքայ դաւիթ՝ հարցանել զխաղաղութենէ նորա։ և օրհնեաց զնա՝ փոխանակ զի սատակեաց զադրաազար․ զի այր գոռ պատերազմու էր նա ընդ թովուայ․ և հակառակ կայր նմա ադրաազար։ և 'ի ձեռս նորա էին անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք։ և անօթք պղնձիք։ * Եւ զայն սրբեաց արքայ դաւիթ Տն ընդ արծաթոյն և ընդ ոսկւոյն․ զոր սրբեաց յամ պատերազմաց․ որոց յաղթեաց։ * Յեդովմայ․ և 'ի մովաբայ․ և յորդւոցն ամոնայ․ և յայլազգեացն․ և յամաղեկայ․ և յաւարէ ադրաազարայ որդւոյ ռոոբայ արքայի սուբայ։ * Եւ արար դաւիթ անուն։ և 'ի դառնալ իւրում՝ եհար դաւիթ զասորիս 'ի գաբեղէմ յութուտասն հազար։ * Եւ եդ յեդոմ պահապանս յամ եդովմայեցիս․ և եղեն ամ եդովմայեցիք ծառայք արքայի։ և փրկեաց Տր զդաւիթ յամ ուրեք ուր և երթայր։ * Եւ թագաւորեցոյց զդաւիթ 'ի վր ամ Իէլի․ և առնէր դաւիթ իրաւունս և արդարութիւն 'ի վր ամ ժողովրդեան իւրոյ։ * Եւ յովաբ՝ որդի շարուհեայ էր 'ի վր զօրուն։ և յովսափատ որդի աքիայ 'ի վր յիշատակաց։ * Եւ սադոկ որդի աքիտովբայ․ և աքիմելէք որդի աբիաթարայ քահանայք։ և սասա դպրապետ։ * Եւ բանեա որդի յովիդայեայ խորհրդական․ և քերեթին․ և ոփելեթին։ և որդիք դաւթի խոռապետք էին։

## Գլ: Թ:

Եւ ասէ դաւիթ․ եթէ իցէ՞ ոք մնացեալ 'ի տանէն սաւուղայ, արարից ընդ նմա ողորմութիւն վասն յոնաթանու։ * Եւ 'ի տանէն սաւուղայ էր մանուկ մի․ և անուն նորա սիբա․ և կոչեցին զնա առ դաւիթ, և ասէ ցնա արքայ․ եթէ դո՞ւ իցես սիբայն։

բայն. եւ ասէ. Ես եմ ծառայ քո: 3 *Եւ ասէ արքայ. եթէ իցէ ոք մնացեալ ՚ի տանէն Սաւուղայ՝ արարից ընդ նմա ողորմութիւն Ա՟յ: եւ ասէ Սիբա ցարքայ. է որդի մի Յոնաթանու հաշմ ոտիւք: 4 *Եւ ասէ արքայ. ո՞ւր է նա: եւ ասէ Սիբա ցարքայ. ահաւէ ՚ի տան Մաքիրայ որդւոյ Ամիելիլա Դաբարացւոյ: 5 *Եւ առաքեաց արքայ Դաւիթ եւ էառ զնա ՚ի տանէ Մաքիրայ որդւոյ Ամիելիլա Դաբարացւոյ: 6 *Եւ եկն Մեմփիբոսթէ որդի Յոնաթանու որդւոյ Սաւուղայ առ արքայ Դաւիթ. եւ անկաւ ՚ի վ՟ր երեսաց իւրոց՝ եւ երկիր եպագ նմա: եւ ասէ ցնա Դաւիթ՝ Մեմփիբոսթէ. եւ ասէ. աւասիկ եմ ծառայ քո: 7 *Եւ ասէ ցնա Դաւիթ. մի երկնչիր. զի առնելով արարից ընդ քեզ ողորմութիւն վասն Յոնաթանու հօր քոյ. եւ դարձուցից քեզ զամենայն անդս Սաւուղայ զհօր հօր քոյ. եւ դու ուտիցես հաց հանապազ ՚ի սեղանի իմում: 8 *Եւ երկիր եպագ Մեմփիբոսթէ եւ ասէ: ո՞վ է ծառայ քո՝ զի հայեցար ՚ի շուն մի մեռեալ՝ նմանօղ ինձ: 9 *Եւ կոչեաց արքայ զՍիբա զծառայ Սաւուղայ՝ եւ ասէ ցնա: զա՟մ ինչ որ է Սաւուղայ՝ եւ զա՟մ որ տանն ն՟ր. ետու որդւոյ տեառն քոյ: 10 *Եւ գործեսցես դմա զերկիրն՝ դու եւ որդիք քո. եւ ծառայք քո. եւ մուծցես ՚ի տուն տեառն քո զհաց. եւ կերիցեն զայն. եւ Մեմփիբոսթէ որդի տեառն քոյ՝ կերիցէ հաց հանապազ ՚ի սեղանի իմում: եւ Սիբայի էին որդիք հնգետասան՝ եւ ծառայք քսան: 11 *Եւ ասէ Սիբա ցարքայ: ըստ ա՟մի զոր հրամանն ետ տէր իմ արքայ ծառայի իւրում, այնպէս արասցէ ծառայ քո: եւ Մեմփիբոսթէ ուտէր զհաց ՚ի սեղանոյ Դաւթի իբրեւ զմի յորդւոցն արքայի: 12 *Եւ Մեմփիբոսթեայ էր որդի մի փոքրիկ, եւ անուն նորա Միքա: եւ ա՟մ բնակութի տանն Սիբայի՝ ծառայք Մեմփիբոսթեայ: 13 *Եւ Մեմփիբոսթէ բնակէր յԵ՟մ. զի հանապազ ՚ի սեղանոյ արքայի ուտէր: եւ ինքն էր կաղ յերկոցունց ոտից իւրոց:

## Գլ: Ժ:

1 Եւ եղեւ յետ այնորիկ՝ եւ մեռաւ արքայ որդւոցն Ամոնայ. եւ թագաւորեաց Անոն որդի ն՟ր ընդ նորա: 2 *Եւ ասէ Դաւիթ. Արասցուք ողորմութիւն ընդ Անոնայ որդւոյ Նաասայ: զորօրինակ արար հայր նորա ընդ իս ողորմութիւն. եւ առաքեաց Դաւիթ մխիթարել զնա ՚ի ձեռն ծառայից իւրոց՝ վասն հօր իւրոյ: եւ չոգան ծառայքն Դաւթի յերկիր որդւոցն Ամոնայ: 3 *Եւ ասեն իշխանք որդւոցն Ամոնայ ցԱնոն տէրն իւրեանց. միթէ փառաւորել ինչ զհայր քո առաջի քո առաքեաց առ քեզ Դաւիթ մխիթարիչս. ոչ, այլ զի որոնեսցեն զքաղաքս. եւ դիտեսցեն զսա. եւ լրտեսել զսա առաքեաց Դաւիթ զծառայս իւր առ քեզ: 4 *Եւ կալաւ զծառայսն Դաւթի՝ եւ եգերծ զմօրուս ն՟ց. եւ կտրեաց զհանդերձս ն՟ց ՚ի միջոյ մինչեւ ցեղր. եւ արձակեաց զնոսա: 5 *Եւ պատմեցին Դաւթի վասն արանցն: եւ առաքեաց Դաւիթ ընդ առաջ նոցա. զի էին արքն անարգեալք յոյժ: եւ ասէ արքայ. նստարուք յԵրիքով մինչեւ աճեսցին մօրուք ձեր. եւ ապա դարձջիք: 6 *Եւ տեսին որդիքն Ամոնայ եթէ ամօթ արարին ժողովրդեանն Դաւթի, առաքեցին որդիքն Ամոնայ եւ ՚ի վարձու կալան զԱսորիս Ռոլբայ. եւ զԱսորիս Սուբայ՝ քսան հազար հետեւակաց: եւ զարքայն Ամաղեկայ հազար արամբք. եւ ՚ի Իստովբայ երկոտասան հազար արանց: 7 *Լուաւ արքայ Դաւիթ. եւ առաքեաց զՅովաբ եւ զա՟մ զօրն զօրաւոր: 8 *Եւ ելին որդիքն Ամոնայ եւ ճակատեցան ՚ի պատերազմ առ դրան քաղաքին ասորւոց Սուբայ. եւ Ռոլբ եւ Իստովբ եւ Ամաղէկ էին միայն յանդին: 9 *Եւ ետես Յովաբ եթէ եկին հասին ՚ի վ՟ր նորա առաջոյ եւ զկնի, ընտրեաց յա՟մ երիտասարդաց Ի՟ղի, եւ ճակատեցոյց ընդդէմ ասորւոց: 10 *Եւ զմնացորդս զօրուն ետ ՚ի ձեռս Աբեսսայ եղբօր իւրոյ. եւ ճակատեցան ընդդէմ որդւոցն Ամոնայ: 11 *Եւ ասէ. եթէ յաղթահարեսցեն զիս ասորիքն. եղիջիք ինձ ՚ի փրկութի: եւ եթէ որդիքն Ամոնայ յաղթահարեսցեն զքեզ՝ եղիցուք ապրեցուցանել զքեզ: 12 *Քաջ լեր՝ եւ ժրասցուք ՚ի վ՟ր ժողովրդեան մերոյ՝ եւ ՚ի վերայ քաղաքաց Ա՟յ մերոյ. եւ Տէր արասցէ զհաճոյն առաջի աչաց իւրոց: 13 *Եւ մատեաւ Յովաբ եւ զօրն որ ընդ նմա ՚ի պատերազմ ընդ ասորիսն. եւ փախեան ասորիքն յերեսաց ն՟ր: 14 *Եւ որդիքն Ամոնայ իբրեւ տեսին՝ եթէ փախեան ասորիքն, փախեան եւ նոքա յերեսաց Աբեսսայ. եւ մտին ՚ի քաղաքն: եւ դարձաւ Յովաբ յորդւոցն Ամոնայ՝ եւ եկն յԵրուսաղէմ: 15 *Իբրեւ ետես Ասորին եթէ պարտեցաւ առաջի Ի՟ղի, գումարեցան ՚ի միասին: 16 *Եւ առաքեաց Ադրաազար՝ եւ ժողովեաց զԱսորիս յայնմ կողմանէ գետոյն ՚ի Քաղամակ.

Ա.Մն 19.1.

և եկին՝ և հասին՝ եղամ և սովբակ իշխանք զօրացն ադրաազարայ յառաջ քան զնոսա ։ 17 *Եւ ազդ եղև դաւթի․ և ժողովեաց զամ իէլ․ և էանց ընդ յորդանան․ և եհաս 'ի քաղամակ ։ և ճակատեցան ասորիքն ընդդէմ դաւթի տալ ընդ նմա պատերազմ ։ 18 *Եւ փախեան ասորիքն յերեսաց իսրայէլի ։ և կոտորեաց դաւիթ յասորւոցն եօթնհարիւր կառս․ և քառասուն հազար հեծելոց ։ և զսովբակ իշխան զօրուն նորա եհար․ և մեռաւ անդէն ։ 19 *Իբրև տեսին ամ թագաւորք՝ ծառայք ադրաազարու եթէ պարտեցան առաջի իէլի, անձնատուրք եղեն․ և ուխտեցին ուխտ ընդ իէլի․ և ծառայեցին նմա ։ և երկեան ասորիքն այնուհետև ապրեցուցանել զորդիսն ամոնայ ։

## ԳԼ: ԺԱ:

Ա.Մն. 20.1.

1 Եւ ‖ եղև 'ի դառնալ տարւոյն, 'ի նոյն ժամանակ ելից թագաւորացն․ և առաքեաց դաւիթ զյովաբ՝ և զծառայս իւր ընդ նմա․ և զամ իէլ․ և սատակեցին զորդիսն ամոնայ․ և նստան զռաբաթաւ ։ և դաւիթ նստէր յերուսաղէմ ։ 2 *Եւ եղև ընդ երեկս․ և յարեաւ դաւիթ յանկողնէ իւրմէ․ և զգնայր 'ի վր տանեաց տան թագաւորին․ և ետես 'ի տանեացն կին մի լուացեալ․ և կինն գեղեցիկ տեսլեամբ յոյժ ։ 3 *Եւ առաքեաց դաւիթ՝ և խնդրեաց զկինն․ և ասէ․ ո՞չ դա է բերսաբէէ՝ դուստր ելիաբայ՝ կին ուրեայ քետացւոյ ։ 4 *Եւ առաքեաց դաւիթ հրեշտակս՝ և էառ զնա՝ և եմուտ առ նա՝ և ննջեաց ընդ նմա ։

Ղեւտ. 15.18.

‖ և նա էր սրբեալ 'ի դաշտանէ իւրմէ ։ 5 *Եւ դարձաւ 'ի տուն իւր ։ և յղացաւ կինն․ և առաքեալ պատմեաց դաւթի՝ և ասէ․ յղի եմ ես ։ 6 *Եւ առաքեաց դաւիթ առ յովաբ՝ և ասէ ։ առաքեա առ իս զուրիա քետացի ։ և առաքեաց յովաբ զուրիա առ դաւիթ ։ 7 *Եւ եկեալ ուրիա եմուտ առ դաւիթ․ և եհարց դաւիթ զողջունէ յովաբայ․ և զողջունէ զօրուն․ և զողջունէ պատերազմին ։ ( և ասէ ողջոյն է ։ ) 8 *Եւ ասէ դաւիթ ցուրիա․ էջ 'ի տուն քո և լուա զոտս ։ և ել ուրիա 'ի տանէ արքայի․ և ել զկնի նր պարգև 'ի ձեռանէ արքայի ։ 9 *Եւ ննջեաց ուրիա՝ առ դրան տանն արքայի ընդ ծառայս նորա․ և ոչ էջ 'ի տուն իւր ։ 10 *Եւ պատմեցին դաւթի՝ և ասեն․ եթէ ոչ էջ ուրիա 'ի տուն իւր ։ և ասէ դաւիթ ցուրիա՝ ո՞չ 'ի ճանապարհէ եկեալ ես դու․ ընդէ՞ր ոչ իջեր դու 'ի տուն քո ։ 11 *Եւ ասէ ուրիա ցդաւիթ․ տապանակն ՏՆ և իսրայէլ՝ և յուդա՝ բնակեալ են 'ի վրանս․ և տէր իմ յովաբ՝ և ծառայք տեառն իմոյ՝ բնակեալ են 'ի բացի․ և ես մտանիցեմ 'ի տուն իմ ուտել՝ և ըմպել՝ և ննջել ընդ կնոջ իմում․ և զիարդ լինիցի այն․ կենդանի է անձն քո՝ թէ արարից զբանդ զայդ ։ 12 *Եւ ասէ դաւիթ ցուրիա․ նիստ այսօր աստ․ և վաղիւ արձակեցից զքեզ․ և նստաւ ուրիա յերուսաղէմ յաւուր, այնմիկ ։ 13 *Եւ 'ի վաղիւ անդր կոչեաց զնա դաւիթ․ եկեր առաջի նորա և էարբ․ և արբեցաւ․ և ել անագանին՝ և ննջեաց յանկողնի իւրում ընդ ծառայս տեառն իւրոյ․ և 'ի տուն իւր ոչ էջ ։ 14 *Եւ եղև ընդ առաւօտն՝ և գրեաց դաւիթ հրովարտակ առ յովաբ ։ և առաքեաց դաւիթ 'ի ձեռն ուրիայ ։ 15 *Եւ գրեաց 'ի հրովարտակին՝ և ասէ․ մատո զուրիա ընդդէմ սաստկացեալ պատերազմին․ և դարձջիք ընդ կրունկ 'ի նմանէ․ և հարցի՝ և մեռցի ։ 16 *Եւ եղև 'ի պահել յովաբայ զքաղաքն․ և եդ զուրիա 'ի տեղին՝ ուր գիտէր թէ արք զօրութե էին անդ ։ 17 *Եւ ելին արք քաղաքին 'ի պատերազմ ընդ յովաբայ․ և անկան 'ի զօրուէ ծառայիցն դաւթի՝ և մեռաւ ուրիա քետացի ։ 18 *Եւ առաքեաց յովաբ և պատմեաց արքայի զամ զբոյց պատերազմին ։ 19 *Եւ պատուէր ետ հրեշտակին և ասէ․ 'ի վախճանել քում զամ զբոյցս պատերազմիս խօսել ընդ արքայի ։ 20 *Եւ եղիցի եթէ ելցէ ցասումն արքայի, և ասասցէ ցքեզ՝ եթէ ընդէ՞ր մերձեցայք 'ի քաղաքն մարտնչել․ և ոչ գիտէիք եթէ 'ի վերուստ 'ի պարսպացն նետաձիգք լինին ։ 21 *Ո՞ եհար զաբիմելէք զորդի յերոբովաղայ՝ որդւոյ ներեայ․ ‖ ոչ ապաքէն կին մի բեկոր երկանի ընկեց 'ի վր նր 'ի վերուստ 'ի պարսպէն․ և մեռաւ 'ի թամասի ։ ընդէ՞ր մօտեցայք 'ի պարիսպն ։ և ասասցես թէ և ծառայք քո ուրիա քետացի մեռաւ ։

Դատ. 9.53.

22 *Եւ չոգաւ հրեշտակն յովաբայ առ արքայ յերուսաղէմ․ և եհաս՝ և պատմեաց դաւթի զամ ինչ․ զոր պատուիրեաց նմա յովաբ (զամ իրս պատերազմին ։ և բարկացաւ դաւիթ 'ի վր յովաբայ․ և ասէ ցհրեշտակն․ ընդէ՞ր մերձեցայք 'ի քաղաքն մարտնչել․ ոչ գիտէիք եթէ հարկանելոց էք 'ի պարսպէն․ ո՞ եհար զաբիմելէք զորդի յերոբովաղայ ։ ոչ ապաքէն կին մի բեկոր երկանի ընկեց 'ի վերայ նր 'ի պարսպէն․ և մեռաւ 'ի թա_

Թամասի. ընդէ՞ր մերձենայիք ’ի պարիսպն։) *Եւ ասէ հրեշտակն ցդաւիթ. զի սաստկացան ’ի վ՟ մեր արք. և ելին առ մեզ արտաքս. և հասաք ’ի վերայ նց̄ մինչև ցդուռն քաղաքին։ 23

*Եւ նետաձիգք եղեն աղեղնաւորքն ’ի ծառայս քո ’ի վերուստ ’ի պարսպէ անտի. և մեռան ’ի ծառայից արքայի. և ծառայ քո ուրիա քետացի մեռաւ։ 24

*Եւ ասէ դաւիթ ցհրեշտակն. այսպէս ասասցես յովաբ. մի՛ թուեսցի չար բանդ յաչս քո. զի երբեմն այսպ՟ ուտէ սուր՝ և երբեմն այնպէս. սաստկացո՛ զպատերազմ ընդ քաղաքիդ և կործանեսցես զդա. և զօրացո՛ զանձն քո։ 25 *Եւ իբրև լուաւ կինն ուրեայ եթէ մեռաւ ուրիա այր իւր, կոծեցաւ ’ի վ՟ առն իւրոյ։ 26 *Իբրև էանց սուգն. առաքեաց դաւիթ և ամփոփեաց զնա ’ի տուն իւր. և եղև նմա կին. և ծնաւ նմա որդի։ և չար թուեցաւ բանն՝ զոր արար դաւիթ յաչս Տն̄։ 27

ԳԼ: ԺԲ:

Եւ առաքեաց Տր̄ զնաթան մարգարէ առ դաւիթ։ և եմուտ առ նա. և ասէ ցնա։ արք երկու էին ’ի քաղաքի միում. մինն մեծատուն. և միւսն աղքատ։ 1 *Եւ մեծատանն էին հօտք և անդեայք բազում յոյժ։ 2 *Եւ աղքատին և ոչ ինչ. բայց որոջ մի փոքր զոր ստացեալ և ապրեցուցեալ և սնուցեալ էր զնա։ և հաստատեալ էր ընդ նմա. և ընդ որդիս նորա ’ի միասին։ ’ի հացէ նորա ուտէր. և ’ի բաժակէ նր̄ ըմպէր. և ’ի ծոց նր̄ ննջէր. և էր նր̄ իբրև զդուստր։ 3 *Եւ եկն անցաւոր առ այրն մեծատուն. և խնայեաց առնուլ ’ի հօտից իւրոց և յանդէոց իւրոց առնել հիւրոյն անցաւորի եկելոյ առ նա. և էառ զորոջ աղքատին՝ և արար առն եկելոյ առ նա։ 4 *Եւ բարկացաւ սրտմտութբ̄ դաւիթ յոյժ առն։ և ասէ դաւիթ ցնաթան. կենդանի է Տր̄՝ զի որդի մահու է այրն. որ արար զայն։ 5

‖ Ելից. 22.1.

*‖ Եւ զորոջն տուժեսցի եօթն պատիկ. փոխանակ առնելոյ զբանն զայն. վն̄ զի ոչ խնայեաց։ 6 *Եւ ասէ նաթան ցդաւիթ. դո՛ւ ես այրն, որ արարեր զայն։ այսպէս ասէ Տր̄ Ած̄ իէլի. ես եմ որ օծի զքեզ թագաւոր ’ի վ՟ իէլի. և ես փրկեցի զքեզ ’ի ձեռաց սաւուղայ։ 7 *Եւ ետու քեզ զտուն տեառն քոյ. և զկանայս տեառն քոյ ’ի ծոց քո. և ետու քեզ զիէլ և զյուդա. և թէ սակաւ իցէ, յաւելից քեզ դոյն չափ։ 8 *Եւ ընդէ՞ր անարգեցեր զբանն Տն̄. առնել չար առաջի աչաց նր̄. զուրիա քետացի հարեր դու սրով. և զկին նորա առեր դու քեզ կնութն̄. և զնա սպաներ սրով որդւոցն ամովնայ։ 9

10 *Եւ արդ՝ մի՛ հեռասցի սուր ’ի տանէ քումմէ մինչև յաւիտեան. փոխանակ զի անարգեցեր զիս. և առեր զկինն ուրիայ քետացւոյ լինել քեզ կնութն̄։

11 *Այսպէս ասէ Տր̄. ահա ես յարուցից ’ի վ՟ քո չարիս ’ի տանէ քումմէ. և առից զկանայս քո առաջի աչաց քոց. ‖ և տաց ընկերի քում. և ննջեսցէ ընդ կանայս քո յանդիման արեգականս այսորիկ։

‖ Ս[illegible] 16.22.

12 *Զի դու արարեր գաղտ ’ի ծածուկ. և ես արարից զբանդ զայդ յանդիման ամ̄ իէլի. և առաջի արեգականս այսորիկ։

13 *Եւ ասէ դաւիթ ցնաթան. մեղայ Տն̄. և ասէ նաթան ցդաւիթ. ‖ և Տր̄ անցոյց զքո զմեղս քո, և մի՛ մեռցիս։

‖ Սիրաք. 47.13.

14 *Եւ բայց քանզի զայրացուցանելով զայրացուցեր զթշնամիս Տն̄ բանիւդ այդուիկ. որդին քո՝ որ ծնանելոց է քեզ՝ մահու մեռցի։

15 *Եւ գնաց նաթան ’ի տուն իւր. և եհար Տր̄ զմանուկն. զոր ծնաւ կինն ուրիայ դաւթի։ և հիւանդացաւ։

16 *Եւ խնդրեաց դաւիթ յԱյ̄ վասն մանկանն։ և պահեաց դաւիթ պահս. և եմուտ և անկաւ ’ի վ՟ գետնոյ։

17 *Եւ յարեան ’ի վ՟ նր̄ ծառայք տանն յարուցանել զնա. և ոչ կամէր յառնել ’ի գետնոյն. և ոչ եկեր ընդ նոսա հաց։

18 *Եւ եղև յաւուրն եօթներորդի մեռանիլ մանկանն։ և երկեան ծառայքն դաւթի պատմել նմա՝ եթէ մեռաւ մանուկն։ զի ասացին՝ եթէ մինչդեռ կենդանի էր մանուկն՝ խօսեցաք ընդ նմա և ոչ լուաւ ձայնի մերում, և զիա՞րդ ասասցուք նմա թէ մեռաւ մանուկն. և գործիցէ չարիս։

19 *Եւ ետես դաւիթ եթէ շշնջեն ծառայք նր̄. և իմացաւ դաւիթ եթէ մեռաւ մանուկն. և ասէ դաւիթ ցծառայսն իւր. եթէ մեռեա՞լ իցէ մանուկն. և ասեն. մեռաւ։

20 *Եւ յարեաւ դաւիթ ’ի գետնոյն. և լուացաւ. և օծաւ. և փոխեաց զհանդերձս իւր. և եմուտ ’ի տունն Այ̄. և երկիր եպագ նմա։ և եմուտ ’ի տուն իւր. և խնդրեաց հաց ուտել։ և եդին առաջի նորա հաց՝ և եկեր։

21 *Եւ ասեն ցնա ծառայքն իւր. զի՞նչ է բանդ այդ՝ զոր արարեր վասն մանկանն. մինչդեռ կենդանին էր պահէիր, և լայիր՝ և տքնէիր. և իբրև մեռաւ մանուկն, յարեար՝ կերեր՝ և արբեր։

22 *Եւ ասէ դաւիթ. մինչդեռ կենդանի էր մանուկն՝ պահէի և լայի. քանզի ասէի. ո՛ գիտէ ողորմեսցի Տէր և

կեցցէ

կեցցէ մանուկն ։ *Իսկ արդ որովհետեւ 23
մեռաւ մանուկն՝ ես ընդէ՞ր պահե_
ցեմ. մի թէ կարօ՞ղ իցեմ՝ դարձուցա
նել զնա այսրէն. ես առ նա երթալոց
եմ. և նա առ իս ոչ դարձցի։ *Եւ մխի 24
թարեաց դաւիթ զբերսաբէէ զկին
իւր. և եմուտ առ նա. և ննջեաց ը
նմա։ և յղացաւ՝ և ծնաւ որդի. և կո
չեաց զանուն նորա սաղոմոն։ և Տէր
սիրեաց զնա։ *Եւ առաքեաց 'ի ձեռն 25
նաթանայ մարգարէի. և կոչեաց զա
նուն յեդեդի վասն Տն։ *Եւ պա_ 26
տերազմեցաւ յովաբ յռաբաթ որդ_
ւոցն ամոնայ. և եհաս յառնուլ զքա_
ղաքն թագաւորութե։ *Եւ առա_ 27
քեաց յովաբ հրեշտակս առ դաւիթ
և ասէ. պատերազմեցայ ընդ ռաբա_
թայ. և հասի յառնուլ զքաղաքս ջրոյ։
*Եւ արդ ժողովեա զմնացորդս ժո_ 28
ղովրդեանդ, և բանակեսցիս զքաղա_
քաւս. և առցես զսա։ զի մի ես առից
զքաղաքս՝ և կոչեսցի անուն իմ 'ի վր
սորա։ *Եւ ժողովեաց դաւիթ զամ 29
ժողովուրդն. և չոգաւ յռաբաթ՝ և
պատերազմեցաւ ը նմա և եառ զնա։
*Եւ եառ զպսակն մելքոմայ թա_ 30
գաւորին նց 'ի գլխոյ նր. և կշիռ նր
տաղանդ մի ոսկւոյ. և ականց պատ_
ուականաց. և էր 'ի գլուխ դաւթի. և
եհան զաւար քաղաքին՝ բազում յոյժ։
*Եւ զժողովուրդն որ էր 'ի նմա՝ եհան 31
արտաքս. և եարկ ընդ սղոցաւ և ը քե
րանօք երկաթեօք. և շրջեցուցանէր
զնոսա աղիւսով. և այնպէս առնէր
ընդ ամ քաղաքս որդւոցն ամոնայ. և
դարձաւ դաւիթ և ամ զօրն յեմ։

որ է սիրե
լի Տն
Ա1. Մնա
20.1.

## ԳԼ. ԺԳ.

Եւ եղեւ յետ այնորիկ. և աբիսա_ 1
ղոմայ որդւոյ դաւթի՝ էր քոյր մի
յոյժ գեղեցիկ տեսլեամբ. և անուն
նորա թամար. և սիրեաց զնա ամնոն
որդի դաւթի։ *Եւ նեղէր ամնոն մինչ 2
չև հիւանդանալ նմա վն թամարայ
քեռ իւրոյ. զի կոյս էր նա. և ծանր
էր յաչս ամնոնի առնել ինչ նմա։ *Եւ 3
էր ընկեր ամնոնայ. և անուն նր յոնա
դաբ. որդի սամաայ եղբօր դաւթի։
և յոնադաբ՝ այր իմաստուն յոյժ։
*Եւ ասէ ցնա։ զի՞ է զի այդպէս ծիւր 4
ես որդի արքայի այգուն՝ այգուն. և
ոչ պատմես ինձ։ և ասէ ցնա ամնոն.
զթամար զքոյր աբիսաղոմայ եղբօր
իմոյ սիրեմ ես։ *Եւ ասէ ցնա յոնա_ 5
դաբ. ննջեա՛ 'ի մահիճս քո՝ և հիւան
դացիր՝ և մտցէ հայր քո տեսանել
զքեզ. և ասասցես ցնա. մտցէ թա_
մար քոյր իմ և արասցէ ինձ խիւս. և

արասցէ առաջի աչաց իմոց կերակուր.
զի տեսից և կերայց 'ի ձեռաց նորա։
6 *Եւ անկաւ ամնոն՝ և հիւանդացաւ.
և եմուտ արքայ տեսանել զնա. և ա_
սէ ամնոն ցարքայ. եկեսցէ թամար
քոյր իմ առ իս. և արասցէ առաջի իմ
կերակուր բլիթս. և կերայց 'ի ձեռաց
7 նորա։ *Եւ առաքեաց դաւիթ առ
թամար 'ի տուն, և ասէ. երթ 'ի տուն
ամնոնի եղբօր քո. և արա՛ նմա կերա_
8 կուր։ *Եւ գնաց թամար 'ի տուն
ամնոնի եղբօր իւրոյ. և նա անկեալ
դնէր։ և եառ հայս և թրեաց. և ա_
րար առաջի նորա բլիթս. և եփեաց
9 զբլիթսն։ *Եւ եառ զտապակն՝ և
թափեաց առաջի նր. և ոչ կամեցաւ
ուտել։ և ասէ ամնոն. հանէ՛ք զամ այր
յինէն արտաքս։ և հանին արտաքս
10 զամ այր 'ի նմանէ։ *Եւ ասէ ամնոն
ցթամար. տա՛ր զխորտիկդ 'ի սե_
նեակ. և կերայց 'ի ձեռաց քոց։ և եառ
թամար զբլիթսն զոր արար. և տա_
րաւ ամնոնի եղբօր իւրում՝ 'ի սենեակն։
11 *Եւ մատոյց նմա ուտել. և նա բուռն
եհար զնմանէ. և ասէ ցնա. եկ՝ ննջեա՛
12 ընդ իս քոյր իմ։ *Եւ ասէ ցնա. մի եղ_
բայր իմ. մի տառապեցուցաներ զիս.
զի ոչ գործի այդպիսի ինչ 'ի մէջ իղի.
և մի առներ զայդ անզգամութի։
13 *Եւ ես յո՞ տանիցեմ զնախատինս
իմ. և դու լինիցիս իբրև զմի յանզգա
մից 'ի մէջ իղի։ և արդ խօսեա՛ց ընդ
արքայի. և ոչ արգելու զիս 'ի քէն։
14 *Եւ ոչ կամեցաւ ամնոն լսել ձայնի
նր. և բռնահարեաց՝ և բռնադատեաց
զնա. և տառապեցոյց զնա. և ննջեաց
15 ընդ նմա։ *Եւ ատեաց զնա ամնոն յա
տելութի մեծ յոյժ. զի մեծ էր ատե
լութիւն, որ ատեաց զնա. և անհնարին
վերջին աղէտքն քան զառաջին սէրն.
զոր սիրեաց զնա։ և ասէ ցնա ամնոն.
16 արի՛ և գնա՛։ *Եւ ասէ ցնա թամար.
մեծ են չարիքս այս քան զայն, զոր ա_
րարեր ընդ իս. արձակելդ քո զիս։ և
ոչ կամեցաւ ամնոն լսել ձայնի նորա։
17 *Եւ կոչեաց զպատանին իւր զվերա
կացու տան իւրոյ. և ասէ ցնա։ հա՛ն
զդա յինէն արտաքս. և փակեա՛ ըզ
18 դուրսդ զկնի դորա։ *Եւ էր զնովաւ
պարեգօտ ասղնեգործ կոճկէնք։ զի
այնպէս զգենուին դստերք թագաւո
րաց կոյսք զձորձս իւրեանց։ և եհան
զնա սպասաւորն արտաքս. և փակեաց
19 զդուրսն զկնի նորա։ *Եւ եառ թա
մար մոխիր. և եարկ զգլխով իւրով.
և զպարեգօտն կոճկէնս զոր զգեցեալ
էր՝ պատառեաց. և եդ զձեռս իւր 'ի
վերայ գլխոյ իւրոյ. և երթայր երթա
լով

րով և լայր։ *Եւ ասէ ցնա աբեսաղոմ 20
եղբայր նորա․ մինթէ ամօն եղբայր քո
եղև ընդ քեզ։ և արդ քոյր իմ լո՛ւռ
կաց՝ զի եղբայր քո է․ մի՛ ածեր զմտաւ
քով խօսիլ զբանդ զայդ։ և նստաւ
թամար այրութեամբ 'ի տան աբեսաղո_
մայ եղբօր իւրոյ։ *Եւ լուա՛ւ արքայ 21
զբանս զայսոսիկ՝ և բարկացաւ յոյժ։
(և ոչ տրտմեցոյց զոգի ամնոնայ որդ_
ւոյ իւրոյ՝ զի սիրէր զնա․ զի անդրա_
նիկ նորա էր։) *Եւ ոչ խօսեցաւ աբե 22
սաղոմ ընդ ամնոնայ 'ի չարէ մինչև ցբա_
րի․ զի ատեայր աբեսաղոմ զամօն վն
բանին, զոր տառապեցոյց զթամար
զքոյր նորա։ *Եւ եղև յետ երկեմեայ 23
աւուրց․ և էին կտուրք աբեսաղոմայ
'ի բեթմարոն յեփրեմ․ և կոչեաց ա_
բեսաղոմ զամենայն որդիսն արքայի։
*Եւ եկն աբեսաղոմ առ արքայ՝ և 24
ասէ ցնա․ ահաւանիկ կտուրք են ծա
ռայի քո․ երթիցէ արքայ և ծառայք
իւր ընդ ծառայի քում։ *Եւ ասէ ար 25
քայ ցաբեսաղոմ․ մի՛ որդեակ իմ․ մի՛
երթիցուք ամենեքեան մեք․ և մի՛ ծան
րասցուք քեզ․ և ստիպեաց զնա․ և ոչ
կամեցաւ երթալ՝ և օրհնեաց զնա։
*Եւ ասէ աբեսաղոմ․ ապա թէ ոչ․ 26
գնասցէ ընդ իս ամօն եղբայր իմ․
և ասէ ցնա արքայ․ ընդէ՞ր երթիցէ
ընդ քեզ ամօն։ *Եւ ստիպեաց զնա 27
աբեսաղոմ․ և արձակեաց ընդ նմա
զամօն․ և զամ զորդիս արքայի։ ( և
արար աբեսաղոմ խրախուն ըստ խրա
խութեան թագաւորի։) *Եւ պատուէ՛ 28
էր ետ աբեսաղոմ մանկտւոյ իւրում
և ասէ․ տեսէ՛ք․ յորժամ զուա՛րթաս
ցի սիրտն ամնոնի 'ի գինւոյ։ և ասացից
ձեզ՝ հարէք զամօն՝ և սպանէք զնա․
մի՛ երկնչիք․ զի ոչ ապաքէն ես իցեմ՝
որ հրամայիցեմ ձեզ։ քաջացարո՛ւք՝
և լերո՛ւք յորդիս զօրութեան։ *Եւ ա_ 29
րարին մանկտիքն աբեսաղոմայ ամո_
նի, որպէս հրամայեաց նց աբեսաղոմ։
և յարեան ամ որդիք արքայի․ և հե_
ծան այր իւրաքանչիւր 'ի ջորւոջ իւր
ում, և փախեան։ *Եւ եղև մինչդեռ 30
նոքա էին 'ի ճանապարհին, գոյժ եկն
առ դաւիթ՝ և ասեն․ կոտորեաց ա_
բեսաղոմ զամ որդիս արքայի․ և ոչ
եթող 'ի նոցանէ՝ և ոչ մի։ *Յարեաւ 31
արքայ․ պատառեաց զհանդերձս իւր․
և անկաւ 'ի վերայ գետնոյ․ և ամ ծա
ռայք նորա կային շուրջ զնովաւ պա
տառեալ զհանդերձս իւրեանց։ *Պա 32
տասխանի ետ յօնադաբ որդի սամմայ
եղբօր դաւթի՝ և ասէ։ մի՛ ասասցէ
տէր իմ արքայ․ եթէ ամ որդիք ար_
քայի մեռան․ զի ամօն միայն մեռաւ։

քանզի 'ի բերան աբեսաղոմայ կայր՝
յօրէ յորմէ տառապեցոյց զթամար
33 զքոյր նորա․ *Եւ արդ մի՛ դիցէ ար_
քայ 'ի սրտի իւրում զբանդ՝ և ասա
ցէ․ թէ ամ որդիք արքայի մեռան․
34 այլ զի ամօն միայն մեռաւ։ *Եւ փա
խեաւ աբեսաղոմ։ և եբարձ պատա
նին դէտն զաչս իւր՝ և ետես․ և ահա
ժողովուրդ բազում գայր ընդ ճանա
պարհն 'ի նմանէ առ կողմամբ լերինն
( ընդ զառ 'ի վայրն։ և եկն դէտն․
պատմեաց արքայի՝ և ասէ։ տեսի արս
'ի ճանապարհին․ որոնիմայ առ կող_
35 մամբ լերինն։) *Եւ ասէ յօնադաբ
ցարքայ․ ահա որդիք արքայի եկին ըս
բանի ծառայի քո՝ նոյնպէս և եղև։
36 *Եւ իբրև վախճանեաց զխօսիլն․ և
ահա որդիքն արքայի եկին․ և ամբար
ձին զձայնս իւրեանց՝ և լացին։ այլ և
արքայ՝ և ամ ծառայք իւր լացին լա
37 լիւն մեծ յոյժ։ *Եւ աբեսաղոմ փա
խեաւ․ և չոգաւ առ թողմելեմ՝ որ_
դի եմիուդայ՝ արքայի գեսուրայ՝ յեր
կիր մաքաղայ։ և սուգ էառ դաւիթ
արքայ 'ի վերայ որդւոյն իւրոյ զամ
38 աւուրս։ *Եւ աբեսաղոմ փախեաւ․
և գնաց 'ի գեսուր․ և էր անդ ամս
39 երիս։ *Եւ դադարեաց արքայ դա_
ւիթ յելանելոյ 'ի վերայ աբեսաղո_
մայ։ քանզի մխիթարեցաւ 'ի վերայ
ամօնայ․ որ մեռաւն։

## Գլ․ ԺԴ․

1 Եւ իմացաւ յովաբ որդի շարու_
հեայ, եթէ է սիրտ արքայի 'ի
2 վն աբեսաղոմայ։ *Առաքեաց յովաբ
'ի թեկուէ․ և էառ անտի կին մի իմաս
տուն․ և ասէ ցնա։ սո՛ւգ առ․ և զգե_
ցի՛ր զհանդերձ սգոյ․ մի՛ օծանիցիս
իւղով։ և եղիցիս իբրև զկին մի սգա
ցեալ 'ի վերայ բազմօրեայ մեռելոյ։
3 *Եւ եկեսցես առ արքայ․ և խօսես_
ցիս ընդ նմա՝ ըստ բանիս ըստ այսմիկ։
և եդ յովաբ բանս 'ի բերան նորա։
4 *Եւ եմուտ կինն թեկուացի առ ար
քայ․ և անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց
'ի գետնի՝ և ասէ։ ապրեցո՛ զիս արքայ՝
5 ապրեցո՛։ *Եւ ասէ ցնա․ զի՞ է քեզ․
և նա ասէ․ կարի իսկ տագնապ է ինձ։
կին մի այրի եմ ես․ մեռաւ այր իմ։
6 *Եւ աղախնոյ քո երկու որդիք էին․
մարտեան ընդ միմեանս երկոքեան յան
դի․ և ոչ ոք էր՝ որ համոզէր 'ի մէջ նց․
և եհար մին զմիւս եղբայրն․ և սպան
7 զնա։ *Եւ ահա յարուցեալ է ամ
ազգն 'ի վր աղախնոյ քո։ ասեն․ տո՛ւր
զսպանողն եղբօր իւրոյ․ և սպանցուք
զնա փոխանակ անձին եղբօր իւրոյ․ և
բարձ_

բարձցուք զժառանգականն քո։ և շիջուցանիցեն զկայծակն իմ զմնացեալ, որ 'ի չթողլոյ առն իմում մնացորդ՝ և անուն 'ի վերայ երեսաց երկրի։ * 8 Եւ ասէ արքայ. երթ ողջամբ 'ի տուն քո, և ես պատուիրեցից վասն քո։ * 9 Եւ ասէ կինն. յիմ վերայ արքայ անօրէնութիւն՝ և 'ի վերայ տան հօր իմոյ. և արքայ, և աթոռ նորա քաւեալ։ * 10 Եւ ասէ արքայ. ո՛վ է՝ որ խօսեսցի ընդ քեզ. և ածցես զնա առ իս՝ և ոչ ևս մերձեսցի առ քեզ։ * 11 Եւ ասէ՝ յիշեսցէ արքայ զՏր Ած իւր. 'ի յաճախել մերձաւորի արեանն ապականել. մի՛ ջնջեսցեն զորդեակն իմ։ և ասէ դաւիթ. կենդանի է Տր. եթէ անկցի 'ի հերոյ որդւոյ քոյ մազ մի 'ի գետին։ * 12 Եւ ասէ կինն. խօսեսցի աղախին քո առաջի տեառն իմոյ արքայի բան մի։ և ասէ, խօսեա՛ց։ * 13 Եւ ասէ կինն. ընդէ՞ր խորհեցար այդպիսի ինչ 'ի վերայ ժողովրդեանն Այ։ կամ թէ 'ի բերանոյ արքայի իցէ բանն այն փոսու՝ չդարձուցանել արքայի զմերժեալն յիւրմէ։ * 14 Զի մահու մեռանիցի՝ և իբրև զջուր հեղեալ յերկիր ոչ ամփոփիցի. ‖ և ոչ առնուցու Ած զոգին։ և խորհիցի ոք մերժել յինքենէ զմերժեալն։ * 15 Եւ արդ եկի խօսել առ արքայի տեառն իմոյ զբանս զայս. զի տեսանիցէ զիս ժողովուրդն, և ասիցէ՝ թէ աղախին քո խօսեսցաւ ընդ արքայի. թերևս արասցէ արքայ զբան աղախնոյ իւրոյ։ * 16 Զի լուիցէ արքայ. և փրկեսցէ զիս 'ի ձեռաց առն, որ խնդրէ ջնջել զիս՝ և զորդի իմ 'ի ժառանգութենէ Այ։ * 17 Եւ ասէ կինն. եղիցի բան տեառն իմոյ արքայի 'ի զոհս։ զի իբրև զհրեշտակ Այ այնպէս է Տր իմ արքայ 'ի լսել զբարի և զչար. և Տր Ած քո եղիցի ընդ քեզ։ * 18 Եւ պատասխանի ետ արքայ՝ և ասէ ցկինն. մի՛ թաքուցաներ յինէն զբան. զոր ես հարցից քեզ։ և ասէ կինն. խօսեսցի տէր իմ արքայ։ * 19 Եւ ասէ արքայ. մի թէ ձեռն յովաբայ իցէ յամի յայդմիկ ընդ քեզ։ և ասէ կինն ցարքայ. կենդանի է անձն քո տէր իմ արքայ, եթէ իցէ յաջ կամ յահեակ՝ յամէ զոր խօսեցաւ տէր իմ արքայ։ զի ծառայ քո յովաբ՝ նա պատուիրեաց ինձ. և նա եդ 'ի բերան աղախնոյ քոյ զամ զբանս զայսոսիկ։ * 20 Վասն բոլորելոյ երեսաց բանիս այսորիկ՝ զոր արար ծառայ քո յովաբ զբանս զայսոսիկ։ և տէր իմ իմաստուն է ըստ իմաստութեն հրեշտակի Այ՝ գիտել զամ ինչ որ յերկրի։ * 21 Եւ ասէ արքայ ցյովաբ. ահաւասիկ արարի քեզ ըստ բանի քում ըստ այդմիկ։ երթ՝ դարձո՛, և ած զպատանեակն զաբեսաղոմ։ * 22 Եւ անկաւ յովաբ 'ի վերայ երեսաց իւրոց յերկիր. և երկիր եպագ նմա. և օրհնեաց զարքայ։ և ասէ յովաբ՝ այսօր գիտաց ծառայ քո եթէ գտի շնորհս յաչս քո՝ տէր իմ արքայ։ զի արար տէր իմ արքայ զբան ծառայի իւրոյ։ * 23 Եւ յարեաւ յովաբ՝ և գնաց 'ի գեսուր. և էած զաբեսաղոմ յերուսաղէմ։ * 24 Եւ ասէ արքայ՝ դարձցի 'ի տուն իւր, և զերեսս իմ մի՛ տեսցէ։ և դարձաւ աբեսաղոմ 'ի տուն իւր. և զերեսս արքայի ոչ ետես։ * 25 Եւ իբրև զաբեսաղոմ ոչ գոյր յամ իՂի այր գեղեցիկ՝ և գովելի յոյժ. 'ի թաթից ոտից իւրոց մինչև 'ի գլուխ իւր ոչ գոյր 'ի նմա արատ. * 26 Եւ 'ի փոքրել զհերս իւր՝ լինէր 'ի սկսանելոյ աւուրց յաւուրս փոքրել՝ զի կարի ծանրանայր 'ի վերայ նր։ և յորժամ փոքրէր, և կշռէր զհեր գլխոյ իւրոյ երկերիւր սիկղ ըստ արքունական սկեղ։ * 27 Եւ ծնան աբեսաղոմայ երեք ուստերք՝ և դուստր մի։ և անուն նորա թամար. և նա էր կին գեղեցիկ յոյժ տեսլեամբ։ (և եղև կին ռոբովամայ որդւոյ սաղոմոնի. և ծնաւ նմա զաբիա։) * 28 Եւ նստաւ աբեսաղոմ յէմ աւուրս ամաց երկուց. և զերեսս արքայի ոչ ետես։ * 29 Եւ առաքեաց աբեսաղոմ առ յովաբ՝ յղել զնա առ արքայ. և ոչ կամեցաւ երթալ առ նա։ և առաքեաց երկրորդ անգամ առ նա. և ոչ կամեցաւ երթալ։ * 30 Եւ ասէ աբեսաղոմ ցծառայս իւր։ գիտէք զվիճակ գետնոյ յովաբայ լի գարւով. մօտ է առ իս. երթայք՝ այրեցէք զնա հրով։ և այրեցին ծառայքն աբեսաղոմայ զվիճակն յովաբայ հրով։ և եկին ծառայքն յովաբայ առ նա՝ պատառեալ զհանդերձս իւրեանց՝ և ասեն. այրեցին ծառայքն աբեսաղոմայ զվիճակն հրով։ * 31 Եւ յարեաւ յովաբ՝ և եկն առ աբեսաղոմ 'ի տուն՝ և ասէ ցնա. ընդէ՞ր այրեցին ծառայք քո զվիճակն իմ հրով։ * 32 Եւ ասէ աբեսաղոմ ցյովաբ։ յղեցի առ քեզ՝ և ասեմ. եկ այսր՝ յղեցից զքեզ առ արքայ. ասել՝ թէ ընդէ՞ր եկի 'ի գեսուրայ. լաւ էր ինձ տակաւին անդ լինիլ՝ բայց ոչ տեսանել զերեսս արքայի. և եթէ փոսս ինչ կայցէ յիս. սպան զիս։ * 33 Եւ եմուտ յովաբ առ արքայ՝ և պատմեաց նմա. և կոչեաց զաբեսաղոմ. և եմուտ առ արքայ. և երկիր եպագ նմա. և անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց առաջի ար.

‖ Եզեկ. 18. 32. Եւ 33. 11

արքայի ։ և համբուրեաց արքայ զաբեսաղոմ ։

## Գլ: ԺԵ:

1 Եւ եղև յետ այնորիկ՝ և արար աբեսաղոմ կառս՝ և երիվարս . և յիսուն այր սուրհանդակ առաջի իւր ։ 2 * Եւ կանխէր աբեսաղոմ, և կայր առ ճանապարհի դրանն ։ և լինէր՝ ամ այր, որոյ էր դատ գալ առ արքայ 'ի դատաստան . բարբառէր առ նա աբեսաղոմ և ասէր ցնա ։ յորմէ՞ քաղաքէ ես դու ։ և ասէր այրն ։ 'ի միոյ 'ի ցեղիցն Իէլի ծառայ քո ։ 3 * Եւ ասէր ցնա աբեսաղոմ . ահա բանք քո բարի են՝ և դիւրինք ։ և որ ունկնդիր լինիցի քեզ, չիք առ 'ի յարքայէ ։ 4 * Եւ ասէր աբեսաղոմ . ո՞ կացուցանէր զիս դատաւոր 'ի վր երկրիս . և առ իս գայր ամ այր, որոյ էր հակառակութի, 'ի դատաստան . և առնէի նմա իրաւունս ։ 5 * Եւ լինէր յորժամ մերձենայր առ նա այր՝ երկիր պագանել նմա, ձգէր զձեռն իւր, և առնուքն մատուցանէր . և համբուրէր զնա ։ 6 * Եւ առնէր աբեսաղոմ ըստ բանիս ըստ այսմիկ ամ Իէլի եկելոյ 'ի դատաստան առ արքայ . և յանկուցանէր յինքն աբեսաղոմ զսիրտս ամ արանց Իէլի ։ 7 * Եւ եղև 'ի կատարել չորից ամաց, ասէ աբեսաղոմ ցհայր իւր . երթայց և հատուցից զուխտս իմ զոր ուխտեցի Տն 'ի քեբրոն ։ 8 * Զի ուխտիւք ուխտեաց ծառայ քո մինչ՝ էի 'ի գեսուր յասորիս՝ ասեմ . եթէ դարձուցանելով դարձուսցէ զիս Տր յէէմ . պաշտեցից զՏր ։ 9 * Եւ ասէ ցնա արքայ . երթ խաղաղութբ ։ և յարեաւ և գնաց 'ի քեբրոն ։ 10 * Եւ առաքեաց աբեսաղոմ պատուիրակս յամ ցեղս Իէլի . և ասէ ։ 'ի լսել ձեր զձայն եղջեր փողոյ . ասասջիք եթէ թագաւորեաց թագաւոր աբեսաղոմ 'ի քեբրոն ։ 11 * Եւ ընդ աբեսաղոմայ գնային արք երկերիւր հրաւիրեալք . և երթային միամտութբ . և ոչ գիտէին ամենևին զզրոյցսն ։ 12 * Եւ առաքեաց աբեսաղոմ և կոչեաց զաքիտոփէլ թեկուացի խորհրդակից դաւթի 'ի քաղաքէ իւր 'ի գովղա . 'ի զոհել իւրում զզոհսն ։ և եղև ժողով սաստիկ . և ժողովուրդ բազում երթայր ընդ աբեսաղոմայ ։ 13 * Եւ եհաս գուժկան առ դաւիթ և ասէ ։ եղև սիրտ արանց Իէլի զհետ աբեսաղոմայ ։ 14 * Եւ ասէ դաւիթ ցամ ծառայս իւր, որք ընդ նմա յէէմ . արիք և փախիցուք . զի ոչ գոյ մեզ փրկութի յերեսաց աբեսաղոմայ ։ փութացարուք գնալ . զի մի արագիցէ

Ըէ

և հասանիցի մեզ . և արկանիցէ 'ի վր մեր չարիս . և հարկանիցէ զքաղաքս սրով սուսերի ։ 15 * Եւ ասեն ծառայքն արքայի յարքայ ։ ըստ ամի . զոր և կամիցի տէր մեր արքայ՝ ահաւասիկ կամք ծառայքո ։ 16 * Եւ ել արքայ՝ և ամ տունն իւր 'ի հետիոտս ։ և եթող արքայ տասն կին 'ի հարճից անտի իւրոյ պահել զտունն ։ 17 * Եւ ել արքայ և ամ ծառայքն իւր հետևակք . և կային առ ձիթենեացն . որ յանապատի անդ ։ 18 * Եւ ամ ծառայք նր մի ըստ միոջէ անցանէին առնովաւ ։ և ամ քերեթին և ոփելեթին ։ և ամ գեթացիք վեց հարիւր այր եկեալ հետևակք 'ի գեթայ՝ և անցանէին առաջի դաւթի ։ 19 * Եւ ասէ արքայ ցեթթի գեթացի ։ ընդէ՞ր գայցես և դու ընդ մեզ . դարձիր անդրէն և բնակեաց ընդ արքայի . զի այր օտար ես դու . և խախտեցար 'ի տեղւոջէ քումմէ 'ի գեթայ՝ և եկիր ։
20 * Եւ այսօր խախտիցեմ զքեզ գնալ ընդ մեզ ։ և ես երթայց յո և երթալոց իցեմ ։ բայց դու դարձիր . և դարձո՛ զեղբարս քո ընդ քեզ ։ և արասցէ ընդ քեզ Տր ողորմութի և ճշմարտութի ։ 21 * Պատասխանի ետ եթթի արքայի՝ և ասէ ։ կենդանի է Տր . և կենդանի է տէր իմ արքայ . զի 'ի տեղւոջ ուր տէրդ իմ արքայ իցէ, և 'ի մահու և 'ի կեանս՝ անդ եղիցի և ծառայ քո ։
22 * Եւ ասէ արքայ ցեթթի . եկ . անց ընդ իս . և էանց եթթի գեթացի . և ամ ծառայք նորա . և ամ ամբոխն իւր ընդ նմա ։ 23 * Եւ ամ երկիրն լայր մեծաձայն ։ և ամ զօրն անցանէր ընդ հեղեղատն կեդրոնի ։ էանց և արքայ ընդ հեղեղատն կեդրոնի . և ամ զօրն՝ և արքայ՝ երթային ընդ երեսս ճանապարհին ։ 24 * Եւ ահա սադովկ և ամ ղևտացիք ընդ նմա . բարձին զտապանակն ուխտին Տն 'ի բեթարա . և կացուցին զտապանակն Տն . և ել 'ի բեթարայ մինչև կատարեաց ամ ժողովուրդն անցանել 'ի քաղաքէ անտի ։ [Եւ ել աբիաթար]
25 * Եւ ասէ արքայ ցսադովկ . դարձո՛ զտապանակդ Այ 'ի քաղաք ։ և նստցի 'ի տեղւոջ իւրում ։ եթէ գտից շնորհս առաջի Տն՝ դարձուսցէ զիս . և ցուցցէ ինձ զդա՛ և զվայելչութի դորա ։
26 * Ապա թէ այսպէս ասասցէ ցիս . թէ չեմ հաճեալ ընդ քեզ՝ ահաւասիկ կամ ։ արասցէ ինձ որպէս հաճոյ իցէ առաջի աչաց նորա ։ 27 * Եւ ասէ արքայ ցսադովկ քահանայ . տեսէք . զի դու դառնաս խաղաղութբ 'ի քաղաք . և աքիմաաս որդի քո . և յովնաթան որդի աբիաթարայ՝ երկոքին որդիք ձեր ընդ ձեզ ։

ձեզ: *Եւ ահա ես ընակեցայց յաւա-
բովթ անապատին, մինչև եկեսցէ զրոյց
'ի ձէնջ՝ պատմել ինձ: *Եւ դարձու- 29
ցին սադովկ և աբիաթար զտապա-
նակն յերուսաղէմ, և նստաւ անդ:
*Եւ դաւիթ ելանէր ընդ զառ 'ի 30
վերն ձիթենեացն. ելանէր և լայր. և
զգլուխ իւր ծածկեալ. և ինքն եր-
թայր բոկ. և ամ ժողովուրդն ընդ
նմա ձորձ զգլխով. այր իւրաքանչիւր
ելանէին և լային: *Ազդ եղև դաւ- 31
թի՝ և ասեն. և աքիտոփէլ ընդ ժողո
վեալսն առ աբեսաղոմայ է. և ասէ
դաւիթ. ցրեա՛ զխորհուրդն աքիտո-
փելայ Տր Այ իմ: *Եւ եհաս դա- 32
ւիթ 'ի հռովսն՝ ուր երկրպագն երկիր այ:
և ահա ընդ առաջ նորա քուսի արա
քացի բարեկամ դաւթի պատառեալ
զպատմուճան իւր՝ և հող 'ի գլուխ նր:
*Եւ ասէ ցնա դաւիթ. եթէ անցանի 33
ցես ընդ իս՝ բեռն լինիս ինձ: *Ապա 34
թէ դարձցիս 'ի քաղաք՝ ասասցես ցա
բեսաղոմ՝ եթէ անցին եղբարք քո. (և
արքայ կաթոգին էր զկնի իմ. և էանց
հայր քո.) և արդ ծառայ քո եմ ար-
քայ. (և թո՛ղ կացից առաջի քո.) ծա
ռայ հօր քոյ էի յայնժամ. և արդ քո
ծառայ եմ ես ա՛րքայ. և ցրեսցես յի
նէն զխորհուրդն աքիտոփելայ: *Եւ 35
ահա ընդ քեզ սադովկ և աբիաթար
քահանայք. և եղիցի բան, զոր լսի-
ցես 'ի տանէ արքայի՝ պատմեսջիր սա
դովկայ և աբիաթարու քահանայից:
*Եւ ահա են ընդ նոսա երկոքեան 36
որդիք իւրեանց. աքիմաաս որդի սա-
դովկայ. և յովնաթան որդի աբիա-
թարայ. և առաքեսջիք 'ի ձեռն նոցա
առ իս զամենայն բան. զոր և լսիցէք:
*Եւ եմուտ քուսի բարեկամ դաւ- 37
թի 'ի քաղաքն. և աբեսաղոմ մտա-
նէր 'ի քաղաքն:

## Գլ: ԺԶ:

Եւ դաւիթ անցեալ էր սակաւիկ 1
ինչ ըստ հռովսն. և ահա սիբա
պատանի մեմփիբոսթեայ ը առաջ
նորա. և զոյգ մի իշոց բեռնաւորաց. և
'ի նոսա երկերիւր նկանակ. և հարիւր
չամչեայ. և հարիւր արմաւ. և մար մի
գինւոյ: *Եւ ասէ արքայ ցսիբա. 2
զի՞նչ է այդ. և ասէ սիբա. էշքդ նստե
լոյ արքայի. և հացդ և արմաւդ 'ի կե
րակուր մանկանցդ. և գինիդ ըմպելի
լքելոցդ յանապատի աստ: *Եւ ասէ 3
արքայ. ո՞ւր է որդի տեառն քոյ. ‖ և
ասէ սիբա ցարքայ. ահա նստի յերու
սաղէմ. զի ասէ՝ այսօր դարձուսցեն
ինձ տունն իէլի զթագաւորութի՛ն հօր

‖ Ա թգ. 19.27.

4 իմոյ: *Եւ ասէ արքայ ցսիբա. ահա
քեզ լիցի ամ ինչ, որ է մեմփիբոս-
թեայ. երկիր եպագ սիբա և ասէ.
գտի շնորհս առաջի քո տէր իմ արքայ:
5 *Եւ եկն արքայ դաւիթ մինչև ցբաւ
ուրիմ. և ահա ելանէր անտի այր յազ
գականութենէ տանն սաւուղայ. և
անուն նորա սեմէի որդի գերեայ. ե-
լանելով ելանէր ‖ և անիծանէր:
6 *Եւ ձգէր քարինս դաւթի՝ և ամե-
նեցուն որոց ընդ արքային դաւթի. և
ամ ժողովուրդն, և ամենայն զօրա-
ւորք էին ընդ աջմէ և ընդ ահեկէ ար-
7 քային: *Եւ այսպէս ասէր սեմէի յա
նիծանելն զնա. ե՛լ. ե՛լ. այր արեանց.
8 և այր անօրէն: *Դարձոյց 'ի քեզ Տր
զամ արիւնս տանն սաւուղայ. զի թա
գաւորեցեր փոխանակ նորա. և ետ
Տր զթագաւորութի՛ն քո 'ի ձեռս աբե
սաղոմայ որդւոյ քոյ. և եցոյց քեզ զչա
րիս քո. զի այր արեանց ես դու:
9 *Եւ ասէ աբեսսա որդի շարուհեայ
ցդաւիթ. ընդէ՞ր անիծանէ այնպէս
շուն մի մեռեալ զտէր իմ զարքայ.
10 անցից՝ և առից զգլուխ նորա: *Եւ
ասէ արքայ՝ զի՞ կայ իմ և ձեր որդիք
շարուհեայ. թո՛յլ տուք նմա. թո՛ղ
անիծցէ այնպէս. զի Տր ասաց նմա
անիծանել զդաւիթ. և ո՞վ ասասցէ
11 թէ ընդէ՞ր արարեր այդպէս: *Եւ
ասէ դաւիթ ցաբեսսա, և ցամ ծա-
ռայս իւր. ահաւասիկ որդի իմ. որ ե-
լեալ է յորովայնէ իմմէ, խնդրէ զանձն
իմ. ո՛րչափ ևս որդին յեմինայ. թո՛յլ
տուք նմա անիծցէ. զի Տր ասաց նմա:
12 *Թերևս տեսցէ Տր զտառապանս իմ,
և հատուսցէ ինձ բարիս փոխանակ
13 անիծից նորա յաւուր յայսմիկ: *Եւ
երթայր դաւիթ՝ և արքն որք ընդ նմա
զճանապարհն. և սեմէի երթայր մօտ
առ նա ը կողմաց լերինն՝ և անիծանէր.
և քարինս 'ի կողմանէ նորա ընկենոյր՝
14 և հող ցանէր 'ի վր: *Եւ եկն արքայ՝
և ամ զօրն որք ընդ նմա աշխատեալք.
15 և հանգեան անդ: *Եւ աբեսաղոմ
և ամ իէլ մտին յերուսաղէմ, և աքի
16 տոփէլ ընդ նմա: *Եւ եղև իբրև եկն
քուսի արաքացի բարեկամ դաւթի
առ աբեսաղոմ. և ասէ քուսի ցաբե-
17 սաղոմ, կեցցէ՛ արքայ: *Եւ ասէ ա-
բեսաղոմ ցքուսի՝ ա՞յդ գութ էր քո
ընդ բարեկամին քում. և ընդէ՞ր ոչ
18 չոգար ընդ բարեկամին քում: *Եւ
ասէ քուսի ցաբեսաղոմ, ո՛չ այդպէս
է. այլ զհետ այնորիկ՝ զոր ընտրեաց
Տէր, և ժողովուրդս այս՝ և ամ այր
իսրայէլի, երթայց՝ և նորա եղէց. և
19 ընդ նմա նստայց: *Եւ երկրորդ ան-
դամ

‖ 3. թգ. 2. 8.

գամ ո՞ւմ ծառայեցից ես. ո՞չ ապա_
քէն առաջի որդւոյ նր. որպէս ծա_
ռայեցի հօր քում, նոյնպէս եղէց ա_
ռաջի քո։ *Եւ ասէ աբեսաղոմ ցա_ 20
քիտոփէլ. առէք խորհուրդ 'ի մէջ՝ թէ
զի՞նչ գործեսցուք։ *Եւ ասէ աքիտո 21
փէլ ցաբեսաղոմ. մուտ առ հարճս
հօր քո. զորս եթող պահել զտունն
իւր. և լուիցէ ա՟մ իս՟լ թէ յամօթ ա_
րարեր զհայր քո. և զօրասցին ձեռք
ամենեցուն. որք են ընդ քեզ։ *Եւ 22
հարին վրան աբեսաղոմայ 'ի տանիս.
և եմուտ աբեսաղոմ առ հարճս հօր
իւրոյ յանդիման ա՟մ իլի։ *Եւ խոր_ 23
հուրդ աքիտոփելայ՝ զոր խորհէր յաւ_
ուրսն առաջինս, որպէս թէ հարցա_
նիցէ ոք բան յՏ՟է, այնպէս էր ա՟մ
խորհուրդն աքիտոփելայ առ դաւթի՝
և առ աբեսաղոմայ։

12. 11.

## ԳԼ: ԺԷ:

Եւ ասէ աքիտոփէլ ցաբեսաղոմ. 1
ընտրեցից ինձ երկոտասան հա_
զար արանց. և յարեայց՝ և պնդեցայց
զհետ դաւթի զցայգս։ *Եւ հասից 2
'ի վերայ նր զցայգ. և նա աշխատեալ
է. և լքեալ ձեռօք. և զարհուրեցու_
ցից զնա. և փախիցէ զօրն՝ որ է ընդ նմա.
և սպանից զարքայ միայն։ *Եւ դար 3
ձուցից զա՟մ զօրն առ քեզ. զոր օրի_
նակ դառնայցէ հարսն առ այր իւր.
բայց միայն զանձն միոյ առն խնդրես
ցես. և ա՟մ զօրն եղիցի 'ի խաղաղութե։
*Եւ ուղիղ թուեցաւ բանն առաջի 4
աբեսաղոմայ՝ և առաջի ա՟մ ծերոցն
իլի։ *Եւ ասէ աբեսաղոմ, կոչեցէք 5
զքուսի արաքացի. և լուիցուք՝ թէ
զի՞նչ կայցէ 'ի բերան նր։ *Եւ եմուտ 6
քուսի առ աբեսաղոմ. և խօսեցաւ
աբեսաղոմ ընդ նմա ըստ բանին այ_
նորիկ՝ զոր խօսեցաւ աքիտոփէլ. և
ասէ՝ թէ արասցուք ըստ բանի նորա.
ապա թէ ոչ՝ և դու խօսեաց ինչ։ *Եւ 7
ասէ քուսի ցաբեսաղոմ. ո՞չ է բարւոք
խորհուրդն՝ զոր խորհեցաւ աքիտո_
փէլ այս անգամ։ *Եւ ասէ քուսի՝ 8
դու ինքնին գիտես զհայր քո՝ և զարս
նորա։ զի կարի զօրաւորք են յոյժ. և
դառնացեալք ոգւով իբրև զարջ մի
որդեկորոյս 'ի վայրի. և զայրացեալ
'ի դաշտի. և հայր քո այր պատերազ_
մող. և ոչ տայ դուլ զօրուն։ *Եւ 9
ահա ինքն ղօղեալ իցէ 'ի միում 'ի
բլրոց՝ կամ 'ի միում ուրեք 'ի տեղեաց.
և եղիցի յանկանել 'ի վերայ նց, զա_
ռաջինն հարկանիցէ. և լուիցէ՝ որ լսի
ցէ՝ և ասիցէ՝ թէ եղև խորտակումն
ժողովրդեանն՝ որ զհետ աբեսաղոմայ։

10 *Որանզի և նա այր զօրութե է՝ որոյ (որ այր)
սիրտն իբրև զսրտ առիւծու, հաշե_
լով հաշեսցի. զի գիտէ ա՟մ իլ թէ
զօրաւոր է հայր քո՝ և որդիք զօրութե,
11 որք ընդ նմայն են։ *Եւ ես այսպէս
տամ քեզ խրատ. ժողովելով ժողո_
վեսցի ա՟մ այր իլի 'ի դանայ մինչև
ցբերսաբէէ իբրև զաւազ առ եզր
ծովու բազմութբ. և քո երեսք եր_
12 թիցեն 'ի մէջ նոցա։ *Եւ հասցուք 'ի
վերայ նորա միում 'ի տեղեաց՝ ուրե
գտանիցեմք զնա անդ. և պատեսցուք
զնովաւ՝ որպէս իջանիցէ ցօղ 'ի վերայ
երկրի. և ոչ ապրեցուսցուք զնորա և (զնա)
13 զարանց նր՝ և ոչ զմի ոք։ *Ապա եթէ
'ի քաղաք մտանիցէ՝ առցէ ամենայն
իլ քաղաքին այնմիկ պարանս. և քար
շեսցուք զնոսա մինչև ցհեղեղատն. զի
14 մի մնասցէ անդ և մի մի քար։ *Եւ
ասէ աբեսաղոմ, և ա՟մ այր իլի՝ քաջ է
խորհուրդդ քուսեայ արաքացւոյ քան
զխորհուրդ աքիտոփելայ։ և Տէր ետ
հրաման ցրել զքաջ խորհուրդն աքի
տոփելայ. զի ածցէ Տր 'ի վերայ աբե
15 սաղոմայ զա՟մ չարիսն։ *Եւ ասէ
քուսի արաքացի ցսադովկ՝ և ցաբիա
թար քահանայ. զայս ինչ՝ և զայս
խրատ ետ աքիտոփէլ աբեսաղոմայ՝
և ծերոց իլի. և զայս ինչ՝ և զայս՝ ես
16 խորհեցայ։ *Եւ արդ առաքեցէք վաղ
վաղակի՝ և պատմեցէք դաւթի, և
ասացէք. մի ագանիցիս զայս գիշեր
յաւարովթ անապատին, այլ փութաս
ջիր անցանել. գուցէ կլանիցէ զար_
քայ՝ և զա՟մ ժողովուրդն որ ընդ նմա։
17 *Եւ յովնաթան՝ և աքիմաաս կային
առ աղբերն ռովգելայ. և չոգաւ աղա
խին մի և պատմեաց նց. և նոքա գնա
ցին՝ և պատմեցին զայս արքայի դաւ (առ 'ի)
թի. զի ոչ կարէին մտանել՝ երևել 'ի (պատմել)
18 քաղաքին։ *Եւ ետես զնոսա պատա
նեակ մի. և պատմեաց աբեսաղոմայ.
և չոգան երկոքին. և մտին 'ի տուն
առն միոյ 'ի բաւուրիմ. և նր էր գուբ
19 մի 'ի տան. և մտին անդր։ *Եւ էառ
կինն՝ և կափոյց զխուփն 'ի վր գբոյն.
և ցամաքեցուցանէր 'ի վր նորա արա
20 բովթ. և ոչ եղ բանն 'ի վեր։ *Եւ ե_
կին ծառայքն աբեսաղոմայ առ կինն
'ի տուն անդր. և ասեն. ո՞ւր են աքի_
մաաս և յովնաթան։ և ասէ ցնս կինն.
անցին յայնկոյս ջրոյդ. և նոքա խնդ
րեցին զնոսա. և ոչ գտին. և դարձան
21 յերուսաղէմ։ *Եւ եղև յետ գնալոյն
նոցա, ելին 'ի գբոյն. և չոգան՝ պատ
մեցին արքային դաւթի. և ասեն ցդա
ւիթ. արիք՝ և անցէք ըստ ջուրդ. զի (ընդ)
զայս ինչ՝ և զայս խորհեցաւ վն ձեր

աքիտոփէլ։ 22 *Եւ յարեաւ դաւիթ՝ և ամենայն ժողովուրդն որ ընդ նմա․ և անցին ընդ յորդանան մինչև 'ի լուսանալ առաւօտուն՝ մինչև ոչ մնալոյ և ոչ միոյ ուրուք՝ որ ոչ էանց ընդ յորդանան։ 23 *Եւ աքիտոփէլ իբրև ետես՝ եթէ ոչ եղև խորհուրդ նորա․ հանդերձեաց զէշ իւր․ և յարեաւ՝ և գնաց 'ի տուն իւր 'ի քաղաք․ և հրաման ետ տան իւրում․ և խեղդ էարկ՝ և մեռաւ․ և թաղեցաւ 'ի գերեզմանի հօր իւրոյ։ 24 *Եւ դաւիթ եհաս 'ի բանակս․ և աբեսաղոմ էանց ընդ յորդանան՝ ինքն և ամենայն իէլ ը՟ նմա։ 25 *Եւ զամեսայի կացոյց աբեսաղոմ փոխանակ յովաբայ 'ի վ՟ր զօրուն․ և ամեսայի որդի էր առն՝ որում անուն էր յոթոր՝ յեզրայելացի․ նա եմուտ առ աբիգեայ՝ դուստր յեսսեայ՝ քոյր շարուհեայ, մօր յովաբայ։ 26 *Եւ բանակեցաւ աբեսաղոմ և ա՟մ իէլ յերկրին գաղաադու։ 27 *Եւ եղև իբրև եհաս դաւիթ 'ի բանակսն՝ վեսբի որդի նաասայ յռաբաթայ որդւոցն ամոնայ, և մաքիր որդի ամիէլի 'ի լադաբարայ․ և բերզելի գաղաադացի յռոգելիմայ։ 28 *Բերին անկողինս տասն․ և օթոցս՝ և սանս տասն․ և անօթս բրտի․ և ցորեան․ և գարի․ և ալիւր․ և փոխինդ․ և ոլոռն․ և ոսպն։ 29 *Եւ մեղր․ և կոգի․ և պատրուճակս․ և որթս դիեցիկս․ և մատուցին դաւթի՝ և զօրուն որ ընդ նմա՝ ուտել․ զի էր զօրն քաղցեալ․ և ծարաւի․ և լքեալ յանապատի անդ։

## ԳԼ․ ԺԸ․

1 Եւ հանդէս արար դաւիթ զօրուն, որ ընդ նմա․ և կացոյց 'ի վ՟ր նց հազարապետս և հարիւրապետս։ 2 *Եւ առաքեաց դաւիթ զերիր մասն զօրուն 'ի ձեռն յովաբայ․ և զերիր մասն 'ի ձեռն աբեսսայ՝ որդւոյ շարուհեայ՝ եղբօր յովաբայ․ և զերիր մասն 'ի ձեռն եթթեայ գեթացւոյ․ և ասէ դաւիթ ցզօրն՝ ելանելով ելից և ես ընդ ձեզ։ 3 *Եւ ասեն՝ ո՛չ ելցես․ զի եթէ փախիցեմք, ո՛չ դիցեն 'ի վերայ մեր զմիտ․ և եթէ կիսոյկէս 'ի մէնջ մեռանիցիմք՝ ո՛չ դիցեն 'ի վերայ մեր զմիտ․ զի դու իբրև զտասն հազար 'ի մէնջ ես․ և արդ լաւ է՝ թէ դու 'ի քաղաքի իցես՝ զի լինիցիս մեզ յօգնականութի։ 4 *Եւ ասէ ցնոսա արքայ․ որինչ հաճոյ իցէ առաջի ձեր՝ արարից․ և եկաց արքայ յեց առ դրանն․ և ամենայն զօրն ելանէր՝ ըստ հարիւրաւորաց և ըստ հազարաւորաց։ 5 *Եւ պատուէր ետ արքայ յովաբայ՝ և աբեսսեայ՝ և եթթեայ՝ և ասէ․ խնայեսջիք 'ի պատանեակն իմ աբեսաղոմ։ և ա՟մ զօրն լուաւ 'ի պատուիրելն արքայի ամենայն իշխանացն վ՟ն աբեսաղոմայ։ 6 *Եւ ել ա՟մ զօրն յանտառն ընդդէմ իէլի․ և եղև կռիւ յանտառին եփրեմայ։ 7 *Եւ պարտեցաւ անդ զօրն իէլի առաջի ծառայիցն դաւթի և եղև խորտակումն մեծ՝ յաւուր յայնմիկ․ և անկան քսան հազար արանց։ 8 *Եւ եղև անդ պատերազմն ցրուեալ ընդ ա՟մ երեսս երկրին․ և յաճախեաց անտառն ուտել 'ի զօրուէն քան զոր եկեր սուրն յաւուրն յայնմիկ։ 9 *Եւ դիպեցաւ աբեսաղոմ առաջի ծառայիցն դաւթի․ և աբեսաղոմ էր հեծեալ 'ի ջորւոջ իւրում․ և եմուտ ջորին ընդ թաւ կաղնեաւ մեծաւ․ և պատեցաւ գլուխ նր ընդ կաղնեաւն․ և կախեցաւ ընդ երկինս և ընդ երկիր․ և ջորին էանց 'ի ներքոյ նորա։ 10 *Եւ ետես այր մի․ և պատմեաց յովաբայ՝ և ասէ․ ահա տեսի զաբեսաղոմ կախեալ զկաղնւոյն։ 11 *Եւ ասէ յովաբ ցայրն, որ պատմեաց նմա․ և ահա տեսեր՝ և ընդէ՞ր ոչ հարեր զնա ընդ գետին․ և ես տայի քեզ այսօր յիսուն սիկղ արծաթոյ՝ և գօտի մի։ 12 *Եւ ասէ այրն ցյովաբ՝ և եթէ կշռով իսկ առնուի 'ի ձեռաց քոց հազար սիկղ արծաթոյ՝ ոչ ձգէի զձեռն իմ յորդի արքայի․ զի յականջս մեր պատուիրեաց արքայ քեզ՝ և աբեսսեայ՝ և եթթեայ․ և ասէ՝ զգոյշ լինիջիք պատանեկին աբեսաղոմայ։ 13 *Մի՛ ինչ վնաս առնել անձին նորա․ և ա՟մ բան ոչ թաքչիցի յարքայէ․ և դու կայցես 'ի բացեայ։ 14 *Եւ ասէ յովաբ՝ վ՟ն այդորիկ իսկ անցից առաջի քո․ և էառ յովաբ երիս նետս 'ի ձեռին իւրում․ և եհար զնոսա 'ի սրտի աբեսաղոմայ՝ մինչդեռ կենդանի կայր 'ի կաղնւոջն։ 15 *Եւ պատեցան տասն մանուկ 'ի զինակրացն յովաբայ․ և հարին զաբեսաղոմ և սպանին զնա։ 16 *Եւ եհար յովաբ զփողն եղջերեայ․ և դարձաւ զօրն իւր ընդ նմա․ զի մի՛ երթիցեն զհետ իսրայէլի․ զի խնայեաց յովաբ 'ի զօրն։ 17 *Եւ էառ յովաբ զաբեսաղոմ և ընկեց զնա 'ի վիհ մեծ յանտառին 'ի խորին յոյժ․ և ա՟մ իէլ փախեաւ այր յիւրաքանչիւր 'ի բնակութի իւր։ 18 *Բայց աբեսաղոմ մինչդեռ կենդանի էր՝ կանգնեաց զիւր արձան․ և կանգնեաց 'ի յաբին զարձանն 'ի հովիտս թագաւորաց․ քանզի ասաց թէ չէր իւր որդի․ որ յիշեսցէ զանուն նր․ և

և կոչեաց զարձանն յիւր անուն. և կոչեցաւ զնա Ձեռն Աբեսաղոմայ մինչև ցայսօր։ 19 * Եւ Աքիմաաս որդի Սադովկայ ասէ. ընթացայց՝ և տարայց աւետիս արքայի. զի արար նմա Տր̃ իրաւունս ՚ի ձեռաց թշնամեաց իւրոց։

20 * Եւ ասէ ցնա Յովաբ. ո՛չ ես դու այր աւետեաց յաւուր յայսմիկ. և տացես աւետիս յայլում աւուր. բայց յաւուր յայսմիկ մի՛ տացես աւետիս. քանզի որդի արքայի մեռաւ։ 21 * Եւ ասէ ցՔուսի՝ երթ պատմեա՛ արքայի զոր ինչ տեսեր. և երկիր եպագ Քուսի Յովաբայ՝ և ել։ 22 * Եւ յաւել ևս Աքիմաաս որդի Սադովկայ՝ և ասէ ցՅովաբ. և զի՞նչ լինիցի եթէ ընթանայցեմ՝ և ես զկնի Քուսեայ. և ասէ Յովաբ. և ընդէ՞ր իցէ քեզ այն՝ եթէ ընթանայցես որդեակ իմ. ա՛յսր եկ, ո՛չ ինչ են քեզ աւետիքն յօգուտ երթալոյ։ 23 * Եւ ասէ. զի՞ է՝ թէ ընթանայցեմ. և ասէ ցնա Յովաբ. ընթա՛. և ընթացաւ Աքիմաաս ընդ Ճանապարհն Կեքարայ՝ և էանց զՔուսեաւ։ 24 * Եւ Դաւիթ նստէր ՚ի մէջ երկոցունց դրանցն. և գնաց դէտն ՚ի տանիսն դրանն ՚ի պարիսպն. ամբարձ զաչս իւր և ետես. և ահա այր ընթանայր միայն հանդէպ իւր։ 25 * Եւ աղաղակեաց դէտն՝ և ազդ արար արքայի. և ասէ արքայ՝ եթէ միայն է՝ աւետիք են ՚ի բերան նորա։ և գալով գայր՝ և մերձենայր։ 26 * Եւ ետես դէտն միւսև այր ընթացեալ. և աղաղակեաց դէտն ՚ի դուռն՝ և ասէ. ահա միւս ևս այր ընթանայ միայն. և ասէ արքայ. և նա աւետաւոր է։ 27 * Եւ ասէ դէտն՝ տեսանեմ զընթացս առաջնոյն իբրև զընթացս Աքիմաասայ որդւոյ Սադովկայ. և ասէ արքայ. այր բարի է. և բարի աւետեօք գայ։ 28 * Եւ աղաղակեաց Աքիմաաս և ասէ ցարքայ. ողջոյն է. և երկիրպագ ՚ի վերայ երեսաց իւրոց յերկիր. և ասէ օրհնեալ է Տէր Ած̃ քո որ փակեաց զարս ատելիս քո որք ամբարձին զձեռս իւրեանց ՚ի վ͠ր տեառն մերոյ արքայի։ 29 * Եւ ասէ արքայ, եթէ ողջո՞յն իցէ մանկանն իմոյ Աբեսաղոմայ. և ասէ Աքիմաաս. տեսի խուռն մեծ ուստի առաքեացն Յովաբ ծառայ քո՝ ա՛րքայ, զիս զծառայ քո. և ոչ գիտացի թէ զի՛նչ իցէ անդ։ 30 * Եւ ասէ արքայ. դարձի՛ր՝ և արձանացի՛ր. և դարձաւ՝ և եկաց։ 31 * Եւ եհաս Քուսի. և ասէ ցարքայ. աւետիք տն̃ իմոյ արքայի. զի արար քեզ Տր̃ իրաւունս այսօր ՚ի ձեռաց ամենայն յարուցելոց ՚ի վերայ քո։ 32 * Եւ ասէ արքայ ցՔուսի. եթէ ողջո՞յն իցէ մանկանն իմոյ Աբեսաղոմայ. և ասէ Քուսի՝ եղիցին իբրև զմանուկն թշնամիք Տն̃ իմոյ արքայի. և ամ̃ յարուցեալք ՚ի վ͠ր քո ՚ի չարութի։ 33 * Եւ խռովեցաւ արքայ. և ել ՚ի վերնատուն դրանն. և ելաց. և այսպէս ասէր ՚ի լալ իւրում. որդեակ իմ Աբեսաղոմ, Աբեսաղոմ որդեակ իմ, ո՞ տայր զմահ իմ փոխանակ քո. ես փոխանակ քո Աբեսաղոմ որդեակ իմ. որդեակ իմ Աբեսաղոմ։

## Գլ. ԺԹ.

1 Եւ պատմեցաւ Յովաբայ՝ և ասեն. ահաւանիկ արքայ լայ՝ և ողբայ ՚ի վերայ Աբեսաղոմայ։ 2 * Եւ եղև փրկութիւն յաւուր յայնմիկ ՚ի սուգ ամ̃ զօրուն. զի լուաւ զօրն յաւուր յայնմիկ. ասեն՝ թէ տրտմեցաւ արքայ վ͠ս որդւոյն իւրոյ։ 3 * Եւ խորշէր զօրն յաւուր յայնմիկ մտանել ՚ի քաղաքն՝ ո͠պ խորշիցի զօր ամաչեցեալ. յորժամ փախչիցի ՚ի պատերազմէ։ 4 * Եւ արքայ ծածկեաց զերեսս իւր. և կական եբարձ ՚ի ձայն մեծ՝ և ասէ. ո՛րդեակ իմ Աբեսաղոմ, Աբեսաղոմ որդեակ իմ։ 5 * Եւ եմուտ Յովաբ առ արքայ ՚ի տուն՝ և ասէ. յամօթ արարեր այսօր զերեսս ամ̃ ծառայից քոց. որք ապրեցուցին զքեզ այսօր՝ և զանձինս ուստերաց և դստերաց քոց. և զանձինս կանանց և զհարճից քոց։ 6 * Սիրել զատելիս քո՝ և ատել զսիրելիս քո. և ցուցեր այսօր՝ եթէ ոչինչ համարիս զիշխանս քո. և ոչ զծառայս քո. և ստուգեալ գիտեմ այսօր. զի եթէ Աբեսաղոմ կենդանի էր, մեք ամենեքեան մեռեալ էաք. և այն էր քեզ հաճոյ։ 7 * Եւ արդ յարուցեալ ե՛լ՝ և խօսեա՛ց ՚ի սիրտ ծառայից քոց՝ զի ՚ի Տր̃ երդուեալ՝ եթէ ոչ ելանիցես այսօր, եթէ ագանիցի առ քեզ այր մի զգիշերս զայս. և գիտասջիր յանձն քո. թէ չար լինիցի քեզ այն՝ քան զամ̃ չարիս՝ որք եկին ՚ի վերայ քո ՚ի մանկութենէ քումմէ մինչև ցայժմ։

8 * Եւ յարեաւ արքայ՝ և նստաւ ՚ի դրանն. և ամ̃ զօրուն պատմեցին, և ասեն. ահա արքայ նստի առ դրանն. և եմուտ ամ̃ զօրն առաջի արքայի. և Իէլ փախեաւ այր իւրաքանչիւր ՚ի բնակութի իւր։ 9 * Եւ ամենայն ժողովուրդն խաղձէր յամ̃ ցեղսն Իղի՝ և ասէին՝ արքայ Դաւիթ փրկեաց զմեզ յամ̃ թշնամեաց մերոց. և նա ապրեցոյց զմեզ ՚ի ձեռաց այլազգեաց. և արդ փախստական է յերկրէս, և ՚ի

Թա_

թագաւորութենէ իւրմէ՝ յաբեսաղոմայ: 10 *Եւ աբեսաղոմ, զոր օծաք մեզ, մեռաւ 'ի պատերազմի. և արդ դուք զի՞ լռեալ կայք 'ի դարձուցանելոյ զարքայ: և պատգամ ամ Իղի եկն առ արքայ: 11 * Եւ արքայ դաւիթ առաքեաց առ սադովկ և աբիաթար քահանայս՝ և ասէ. խօսեցարո՛ւք ընդ ծերս յուդայ՝ և ասասջի՛ք. ընդէ՞ր լինիք յետինք դարձուցանել զարքայ 'ի տուն իւր. և պատգամ ամ Իղի եկն առ արքայ: 12 *Եւ ասէ դաւիթ ցցեղն յուդայ. ոսկերք իմ, և մարմինք իմ դուք՝ ընդէ՞ր լինիք յետինք դարձուցանել զարքայ 'ի տուն իւր: 13 *Եւ ցամեսայի ասասջի՛ք՝ ո՞չ ոսկր իմ և մարմին իմ ես դու. և արդ օնևօն արասցէ ինձ Տր՝ և օնևօն յաւելցէ, եթէ ոչ իշխան զօրու լինիցիս առաջի իմ զամենայն աւուրս փոխանակ յովաբայ: 14 *Եւ դարձոյց զսիրտ ամենայն յուդայ իբրև զառն միոջ. և առաքեցին առ արքայ՝ և ասեն. դարձի՛ր դու՝ և ամ ծառայք քո: 15 *Եւ դարձաւ արքայ. և եկն մինչև ցյորդանան: և արք յուդայ եկին 'ի գաղգաղայ՝ երթալ ընդ առաջ արքայի: և անցուցանել զարքայ ընդ յորդանան: 16 *‖Եւ աճապարեաց սեմէի որդի գերեայ որդւոյ յեմինայ 'ի բաուրիմայ. և էջ ընդ առն յուդայ՝ ընդառաջ արքայի դաւթի:

‖3 Թագ. 2. 8.

17 * Եւ հազար այր ընդ նմա 'ի բենիամինէ. և սիբա պատանի տանն սաւուղայ. և հնգետասանքեն որդիք նորա ընդ նմա. և քսանքեն ծառայք նր ընդ նմա. և կազմեցին զյորդանան առաջի արքայի: 18 *Եւ հարին սպասաւորութիւն անցուցանելոյ զարքայ. և անցին անցաւորք զարթուցանել զտուն արքայի. և առնել զողորմութի առաջի աչաց նորա. և սեմէի որդի գերեայ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց առաջի արքայի՝ մինչև անցանէր ընդ յորդանան: 19 *Եւ ասէ ցարքայ. ‖մի՛ համարեսցի տէր իմ արքայ անօրէնութի. և մի՛ յիշեսցէ զոր ինչ յանցեաւ ծառայ քո. յաւուր յորում ելանէր տէր իմ յերուսաղեմէ. դնել արքայի 'ի սրտի իւրում: 20 * Զի գիտաց ծառայ քո թէ մեղայ. և ահաւասիկ ես եկի այսօր յառաջագոյն քան զամ տունն յոսեփայ. իջանել ընդառաջ տեառն իմոյ արքայի: 21 *Եւ պատասխանի ետ աբեսսա որդի շարուհեայ՝ և ասէ. միթէ փոխանակ այնորիկ ո՞չ մեռանիցի սեմէի՝ զի անէծ զօծեալ Տն: 22 *Եւ ասէ դաւիթ. զի՞ կայ իմ և ձեր՝ որդիք շարուհեայ. զի լինիք դուք ինձ

անցա-ցանել

‖Վեր. 16. 5.

այսօր 'ի դաւաճանութի. մի՛ ոք մեռցի այսօր այր յԻղէ. միթէ ո՞չ գիտիցեմ ես, զի այսօր թագաւորեմ ես 'ի վր Իղի: 23 * Եւ ասէ արքայ ցսեմէի՝ ո՛չ մեռցիս. և երդուաւ նմա արքայ: 24 * Եւ մեմփիբոսթէ որդի յովնաթանու որդւոյ սաւուղայ էջ ընդ առաջ արքայի. և ո՛չ էր դարմանեալ զոտս իւր. և ո՛չ էր հատեալ զեղունգունս իւր. և ո՛չ էր փոքրեալ զմօրուս իւր. և ո՛չ էր արարեալ զմնչօք իւրովք. և ո՛չ էր լուացեալ զհանդերձս իւր յօրէ յորմէ հետէ գնաց արքայ՝ մինչև ցօրն յորում եկն նա խաղաղութբ: 25 *Եւ եղև իբրև եմուտ յերուսաղէմ ել ընդառաջ արքայի. և ասէ ցնա արքայ. զի՞ է. զի ո՛չ գնացեր ընդ իս մեմփիբոսթէ: 26 *Եւ ասէ ցնա մեմփիբոսթէ՝ տէր իմ արքայ. ծառայ իմ արհամարհեաց զիս. զի ասաց ծառայ քո ցնա՝ թէ կազմեա՛ ինձ զէշ. և հեծայց 'ի նա. և գնացից ընդ արքայի. զի կաղ է ծառայ քո: 27 *‖Եւ զայրացոյց ընդ իս ծառայ քո զքեզ՝ տէր իմ արքայ. և տէր իմ արքայ արար զբարին իւր՝ առաջի իւր իբրև զհրեշտակ Այ. և արդ՝ արա՛, որ ինչ բարի է յաչս քո: 28 * Զի ո՛չ էր ամ տուն հօր իմոյ, եթէ ո՛չ արք մահու Տն իմոյ արքայի. և կարգեցեր զծառայ քո ընդ այնոսիկ, որք ուտեն զսեղան արքայի. և արդ զի՞նչ իրաւունք կան իմ այսուհետև բողոք ունել միւսանգամ առ արքայ: 29 *Եւ ասէ ցնա արքայ. զի՞ ես խօսիս զբանս քո. ‖ասացի՝ թէ դու, և սիբա բաժանեցէք զագարակն: 30 *Եւ ասէ մեմփիբոսթէ ցարքայ. զամ իսկ առցէ, որովհետև եկն արքայ խաղաղութբ 'ի տուն իւր: 31 *‖Եւ բերզելի գաղաադացի էջ յռոգելիմայ. և անցոյց զարքայ ընդ յորդանան յուղարկել զնա 'ի յորդանանէ: 32 *‖Եւ բերզելի այր ծեր էր յոյժ. որդի ամաց ութսունից. և նա կերակրեաց զարքայ մինչ բնակէր 'ի բանակս. զի այր մեծ էր յոյժ: 33 *Եւ ասէ արքայ ցբերզելի. դու անցցես ընդ իս՝ և կերակրեցից զծերութի քո ընդ իս յերուսաղէմ: 34 * Եւ ասէ բերզելի ցարքայ. քանի՛ ինչ իցեն աւուրք կենաց իմոց. զի ելանիցեմ ընդ արքայի յերուսաղէմ: 35 *Որդի ամաց ութսնից եմ ես այսօր. միթէ գիտիցե՞մ ինչ 'ի մէջ բարւոյ և չարի. կամ թէ իմանայցէ ծառայ քո, զոր ուտեմ. կամ զոր ըմպեմ. կամ թէ լսիցեմ տակաւին զձայն դուսանաց և վարձակաց. և ընդէ՞ր լինիցի ծառայ քո բեռն տեառն իմոյ արքայի:

‖Վեր. 16. 3.

‖Վեր. 16. 4.

‖3 Թագ. 2. 7.

‖Վեր. 17. 27.

*Սա-

36 * Սակաւ ինչ էանց ծառայ քո ընդ յորդանան ընդ արքայի. և ընդէ՞ր հատուցանիցես ինձ արքայ զհատուցումն զայդ : 37 * Նստցի ծառայ քո՝ և մեռայց ՚ի քաղաքի իւրում. և ՚ի գերեզմանի հօր և մօր իւրոյ. և ահա ծառայ քո Քամաամ անցցէ ընդ տեառն իմում արքայի. և արա նմա, որ ինչ բարի թուի առաջի աչաց քոց : 38 * Եւ ասէ արքայ՝ անցցէ ընդ իս Քամաամ. և ես արարից նմա. որինչ բարի իցէ առաջի աչաց իմոց. և զա՟մ, որինչ ախնունիցիս յինէն՝ արարից քեզ : 39 * Եւ էանց ա՟մ ժողովուրդն ընդ յորդանան՝ էանց և արքայ. և համբուրեաց արքայ զբերզելի. և օրհնեաց զնա. և դարձաւ ՚ի տեղի իւր : 40 * Եւ էանց արքայ ՚ի Գաղգաղայ. էանց և Քամաամ ընդ նմա. և ա՟մ ժողովուրդն յուդայ անցին ընդ արքայի. և կէս ժողովրդեան Իղի : 41 * Եւ ահա ա՟մ այր Իղի եկին առ արքայ՝ և ասեն ցնա : զի՞ է զի գողացան զքեզ եղբարք մեր՝ այր յուդայ. և անցուցին զարքայ. և զտուն իւր ընդ յորդանան : 42 * Եւ պատասխանի ետ այր յուդայ՝ տանն Իղի՝ և ասէ : քանզի մերձաւոր իսկ է իմ արքայ. և ընդէ՞ր դժկամակ եղեր վասն բանիս այսորիկ. միթէ ուտելով կերաք ինչ յարքայէ. կամ թէ պարգևս ետ մեզ. կամ թէ զբեռն ինչ եբարձ զմեր : 43 * Պատասխանի ետ այր Իէղացի առն յուդայ՝ և ասէ. տասն ձեռք իմ են յարքայի. և անդրանիկ ես եմ քան զքեզ. նա և ՚ի Դաւիթ՝ ես ՚ի վեր եմ քան զքեզ. և ընդէ՞ր այդպէս թշնամանեցեր զիս : և ոչ եղև ՚ի համարի բան իմ, նախ ինձ դարձուցանել զարքայ առ իս : և խստացաւ բան առն յուդայ՝ քան զբան առն Իղի :

## Գլ: Ի:

1 Եւ անդ խրախուսեաց այր անօրէն. և անուն նր Սաբեէ. որդի Բոքորայ՝ այր յեմինացի. փող եհար եղջերաւ՝ և ասէ. չի՞ք մեր մասն ՚ի Դաւիթ. և ոչ ժառանգութի յորդին յեսսեայ. այր իւրաքանչիւր ՚ի բնակութիւնս քո Իղի: 2 * Եւ ել ա՟մ Իղ ՚ի Դաւթէ զկնի Սաբէեայ՝ որդւոյ Բոքորայ : և այր յուդայ չոգան զհետ թագաւորին իւրեանց ՚ի յորդանանէ մինչև յէմ: 3 * Եւ եմուտ Դաւիթ ՚ի տուն իւր յէմ. և էառ արքայ զտասն կանայսն զհարճս իւր՝ զորս եթող պահել զտունն. և ետ զնոսա ՚ի տուն պահեստի. և կերակրեաց զնոսա. և առ նոսա ոչ եմուտ : և էին նեղեալք՝ զի մինչև ցօր մահուան իւրեանց կեցին այրիք : 4 * Եւ ասէ Դաւիթ ցԱմեսայի. ձայնեա՛ առ իս զա՟մ այր յուդայ զերիս աւուրս. և դու այսր եկեսցես : 5 * Եւ գնաց Ամեսայի ձայնել զյուդայ՝ և յամեաց ՚ի ժամանակէն՝ զոր եդ նմա : 6 * Եւ ասէ Դաւիթ ցԱբեսա. արդ առնէ մեզ չար Սաբեէ որդի Բոքորայ ք̄ն Աբեսաղոմայ : արդ ա՛ռ դու ընդ քեզ ծառայս տն քոյ. և պնդեա՛ց զհետ նորա. գուցէ գտանիցէ իւր քաղաքս ամուրս. և ածիցէ ստուերածս ՚ի վր աչաց մերոց : 7 * Եւ ելին զհետ նորա Աբեսա՝ և արք Յովաբայ. և քերեթին և ոփելեթին. և ա՟մ զօրաւորք. և ելին յԵմէ պնդել զհետ Սաբէեայ որդւոյ Բոքորայ : 8 * Եւ մինչդեռ էին նոքա առ վիմին մեծի, որ ՚ի Գաբաւօն. և Ամեսայի եմուտ առաջի նոցա. և Յովաբ զգեցեալ էր վարապանակս զրահից. և ՚ի վր նորա սուսեր ընդ մէջ. ծածկեալ առ միջովն պատենիւք հանդերձ. և այն էր թեբուքամեալ : 9 * Եւ ասէ Յովաբ ցԱմեսայի. եթէ ո՞ղջ իցես եղբայր. ‖ և կալաւ Յովաբ աջով ձեռամբն զմօրուսն Ամեսայայ համբուրել զնա : 10 * Եւ Ամեսայի ոչ զգուշացաւ ՚ի սրոյն՝ որ էր ՚ի ձեռին Յովաբայ. և եհար զնա նովաւ Յովաբ ընդ անակուշտսն. և վայթեցաւ որովայն նորա յերկիր. և ոչ կրկնեաց նմա. և մեռաւ Ամեսայի: և Յովաբ՝ և Աբեսա եղբայր իւր՝ պնդեցան զհետ Սաբէեայ որդւոյ Բոքորայ : 11 * Եւ այր մի եկն եկաց ՚ի վր Ամեսայայ յերիտասարդացն Յովաբայ՝ և ասէ. որ ոք սիրիցէ զՅովաբ կամ զԴաւիթ, երթիցէ զհետ Յովաբայ՝ և Աբեսայ : 12 * Եւ Ամեսայի կայր թաթաւեալ յարեանն ՚ի մէջ Ճանապարհին. և տեսեալ առն եթէ զտեղի առեալ կայ ա՟մ զօրն, տապալեաց զԱմեսայի ՚ի Ճանապարհէն յանդն. և ընկեց ՚ի վր նր հանդերձ : քանզի տեսանէր զա՟մ ոք եկեալ կացեալ ՚ի վր նորա : 13 * Եւ իբրև փոխեցաւ ՚ի Ճանապարհէն. անցանէր ա՟մ այր Իղի զհետ Յովաբայ՝ պնդել զհետ Սաբէեայ որդւոյ Բոքորայ : 14 * Եւ էանց ը̄ ա՟մ ցեղսն Իղի յԱբէլ և ՚ի Բեթմաքայ. և ա՟մ ընտիր ընտիրքն՝ ժողովեցան և եկին զհետ նր : 15 * Եւ հասին՝ և պատեցին ՚ի վր նր զԱբէլ և զԲեթմաքայ. և կուտեցին բլուր հողոյ հանդէպ քաղաքին. և կանգնեցաւ իբրև զպատուար. և ա՟մ զօրն որ ընդ Յովաբայ, եղծանէր՝ և կործանէր զպարիսպն : 16 * Եւ աղաղակեաց կին մի ի_

‖ 3 Թագ. 2. 5.

մաս_

մաստոն 'ի պարսպէն՝ և ասէ. լուա՛րուք՝ լուարուք. ասացէք ցՅովաբ՝ մատի՛ր այսր՝ և խօսեցայց ընդ քեզ: 17 * Եւ մատեաւ առ նա: և ասէ կինն. եթէ դո՞ւ իցես Յովաբ. և ասէ. ես եմ: և ասէ ցնա. լո՛ւր բանից աղախնոյ քոյ: և ասէ Յովաբ. 'ի լսել եկեալ եմ ես: 18 * Եւ խօսեցաւ՝ և ասէ. բան ձառէր յառաջինն՝ և ասէին, հարցանելով հարցաւ յաբէլ և 'ի դան. եթէ պակասեցուցեն. եթէ ապստամբեցեն. հաւատարիմք իլի. հարցանելով հարցցեն յաբէլ. և ապա եթէ պակասեցուցանիցեն: 19 * Ես եմ խաղաղարար հաստատութե իլի. և դու խնդրես կորուսանել զքաղաքս իլի: ընդէ՞ր ընկղմես զժառանգութի Տն: 20 * Պատասխանի ետ Յովաբ՝ և ասէ. քա՛ւ լիցի ինձ. քա՛ւ լիցի. եթէ ընկղմեցից՝ և ապականեցից: 21 * Ոչ այդպէս է բանդ. զի այր մի 'ի լեռնէ եփրեմի սաբեէ անուն նր որդի բոքորայ. համբարձ զձեռն իւր 'ի վր արքայի դաւթի. տուք ինձ զնա միայն. և գնացից 'ի քաղաքէ աստի: և ասէ կինն ցՅովաբ: ահա գլուխ նորա ընկեցցի առ քեզ ընդ պարիսպս: 22 * Եւ եմուտ կինն առ ամ ժողովուրդն. և խօսեցաւ ընդ ամ քաղաքին իմաստութբ իւրով. հատանել զգլուխն սաբէեայ՝ որդւոյ բոքորայ: և հատին՝ ընկեցին զնա առ Յովաբ: և փող եհար եղջերեաւն. և սփռեցան 'ի քաղաքէն այր իւրաքանչիւր 'ի բնակութիւն իւրեանց: և Յովաբ դարձաւ յԵրուսաղէմ առ արքայ: ‖ 23 * Եւ Յովաբ էր 'ի վերայ ամ զօրուն իլի: և բանեա որդի յովիդեայ 'ի վր քերեթայն և ոփելեթայն: 24 * Եւ ադոնիրամ 'ի վր հարկաց: և յովսափատ որդի աքիլուդայ յիշատակաց: 25 * Եւ սուդաէ դպրապետ: և սադովկ և աբիաթար քահանայք: 26 * Եւ իրաս որ յարիմ՝ էր քահանայ դաւթի:

‖ 8.16.

ԳԼ. ԻԱ.

1 Եւ եղեւ սով յաւուրս դաւթի զերիս ամս: ամ զամի զկնի: և խնդրեաց դաւիթ յերեսաց Տն: և ասէ Տր. վն սաւուղայ և վն արեանց տանն նր է վնասդ այդ. զի կոտորեաց զգաբաւոնացիսն: 2 * Եւ կոչեաց արքայ դաւիթ զգաբաւոնացիսն, և ասէ ցնս: և գաբաւոնացիքն չէին որդիք իսրայէլի. այլ յաւելեալ ամորհացւոցն. ‖ և որդիքն իլի երդուեան նց. և խնդրեաց սաւուղ հարկանել զնոսա. նախանձ առեալ վն որդւոցն իլի և յուդայ: 3 * Եւ ասէ դաւիթ ցգաբաւոնացիսն. զի՞նչ արարից ձեզ. և իւ՞ քաւեցից. և օրհնիջիք զժառանգութի Տն: 4 * Եւ ասեն ցնա գաբաւոնացիքն: ոչ գոյ մեր արծաթ և ոսկի առ սաւուղայ և 'ի տանն նր. և ոչ պիտի մեզ այր սպանանել յիլէ: և նա ասէ. և արդ զի՞նչ ասէք՝ զի արարից ձեզ: 5 * Եւ ասեն ցարքայ: այր՝ որ սպառեաց զմեզ. և հալածեաց զմեզ. որ համարեցաւ սատակել զմեզ, զնա ապականեսցուք. զի մի կացցէ յամ սահմանս իլի: 6 * Տացեն մեզ եօթն արս յորդւոց նր. և յարագեսցուք զնոսա Տն 'ի գաբաւայ սաւուղայ ընտիրս Տն: և ասէ արքայ. ես տաց ձեզ: 7 * ‖ Եւ խնայեաց արքայ 'ի մեմփիբոսթէ որդի յովնաթանու՝ որդւոյ սաւուղայ՝ վասն երդման Տն. որ 'ի մէջ յովնաթանու որդւոյ սաւուղայ և 'ի մէջ դաւթի: 8 * Եւ էառ արքայ զերկուս որդիսն ռեսփայ դստեր այիայ՝ զորս ծնաւ սաւուղայ. զերմոնթի և զյեբուսթէ. և զհնգեսին որդիսն մեղքողայ՝ դստեր սաւուղայ, զորս ծնաւ եսդրիելի որդւոյ բերզելեայ մոլլաթացւոյ: 9 * Եւ ետ զնս 'ի ձեռս գաբաւոնացւոց. և յարագեցին զնոսա 'ի լերինն առաջի Տն. և անդ անկան եօթանեքին նոքա 'ի միասին: և մեռան նոքա յաւուրս հնձոց. յառաջաւոր 'ի սկզբան հնձոց գարեաց: 10 * Եւ էառ ռեսփա դուստր այիայ քուրձ. և էարկ 'ի վերայ նր 'ի վիմին 'ի սկզբան հնձոց գարեաց: մինչև կաթեաց 'ի վր նր ջուր յերկնից: և ոչ տայր թողլ թռչնոց երկնից հանգչել 'ի վր նոցա 'ի տուէ. և ոչ գազանաց անապատի 'ի գիշերի: 11 * Եւ պատմեցաւ դաւթի՝ զոր ինչ արար ռեսփա՝ դուստր այիայ՝ հարճ սաւուղայ. (և լքան; և եհաս 'ի վերայ նց դան որդի յովասայ՝ 'ի ծննդոց սկայից:) 12 * Եւ չոգաւ դաւիթ. և էառ զոսկերսն սաւուղայ. և զոսկերսն յովնաթանու որդւոյ նր՝ յարանց յաբիսայ գաղաադու ‖ որք գողացան զնս 'ի հրապարակացն բեթսանայ. զի արձանացուցին զնս անդ այլազգիքն՝ յաւուր յորում հարին զնս այլազգիքն 'ի գեղբուէ: 13 * Եւ եհան անտի զոսկերսն սաւուղայ՝ և զոսկերսն յովնաթանու որդւոյ նորա: ժողովեաց և զյարագելոցն: 14 * Յերկրին բենիամինի, 'ի գերեզմանն, որ է մերձ առ կիս հայր նր՝ թաղեցան: և արարին զամ ինչ. զոր հրամայեաց արքայ: և լուաւ Ած երկրին յետ այնորիկ: 15 * Եւ եղեւ միւսանգամ պատերազմ այլազգեացն ընդ իլի. և էջ դաւիթ՝ և ծառայք նր ընդ նմա. և

‖ Յեսու. 9.19.

‖ 1 Թագ. 18.3.

‖ 1 Թագ. 31. 12.

և պատերազմեցան ընդ այլազգիսն. և լքաւ դաւիթ: 16 *Եւ աբեսս՝ ի յեսբէ. որ էր՝ ի ծննդոցն ռափայ. և կշիռ նիզակի նորա յերեք հարիւր սկեղէ կուռ պղնձոյ. և ինքն ունէր ընդ մէջ իւր թուր. և խորհէր հարկանել զդաւիթ. 17 *Եւ օգնեաց դաւթի աբեսսա որդի շարուհեայ. և եհար զայլազգին՝ և սպան զնա: յայնժամ երդուան արք դաւթի՝ և ասեն. թէ ոչ ևս ելցես ընդ մեզ՝ ի պատերազմ. և ոչ շիջուցես զճրագդ իէլի: 18 *Եւ եղև յետ այնորիկ. եղև միւսանգամ պատերազմ՝ ի գէթ ընդ այլազգիսն: յայնժամ եհար սովբաք ուսացի զսեփոն՝ ի ծննդոցն ռափայ: 19 *Եւ եղև միւսանգամ պատերազմ յուովբ ընդ այլազգիսն. և եհար ելեանան որդի արիովգիմայ բեթղահեմացւոյ զգողիադ գեթացի. և փայտ նիզակի նորա իբրև սառն ոստայնանկաց: 20 *Եւ եղև միւսանգամ պատերազմ՝ ի գէթ. և էր անդ այր մի՝ ի մակդիսն. և մատունք ձեռաց նր և ոտից վեցվեց. քսան և չորք թուով. և նա ծնեալ ռափայ: 21 *Եւ նախատէր զիսրայէլ. և եհար զնա յովնաթան որդի սամեայ՝ եղբօր դաւթի: 22 *Զորեքին սոքա ծնան՝ ի ռափայ՝ ի տան գէթայ. և անկան՝ ի ձեռս դաւթի՝ և ՝ի ձեռս ծառայից նորա:

Ա Թագ. 17. 7. — Ա Մնաց. 20. 4. — ծնունդք

## ԳԼ: ԻԲ.

1 Եւ խօսեցաւ դաւիթ Տն զբանս օրհնութեան այսորիկ՝ յաւուր յորում փրկեաց զնա Տէր՝ ի ձեռաց ամ թշնամեաց իւրոց՝ և ՝ի ձեռաց սաւուղայ:

2 *Եւ ասէ. Տր վէմ իմ. և ամրութի իմ. և փրկիչ իմ ինձ:

3 *Ած պահապան եղիցի ինձ. յուսացեալ եղէց՝ ի նա. վերակացու իմ. և եղջիւր փրկութե իմոյ. պաշտպան իմ. և ապաւէն փրկութե իմոյ. յանիրաւէ փրկեսցես զիս Տր:

4 *Օրհնեալն զՏր կարդացից. և ՝ի թշնամեաց իմոց ապրեցայց:

5 *Զի պաշարեցին զիս ջաղջախմունք մահու. ուղխք անօրէնութե տագնապեցուցին զիս:

6 *Երկունք մահու պատեցան զինև. ժամանեցին ինձ որոգայթք մահու:

7 *Ի նեղութե իմում կարդացից առ Տր: և առ Ած իմ աղաղակեցից: և լուիցէ ՝ի տաճարէ իւրմէ ձայնի իմում. և աղաղակ իմ յականջս նորա:

8 *Հայեցաւ՝ և խռովեցաւ՝ և շարժեցաւ երկիր. և հիմունք երկնից խռովեցան, և տապալեցան. զի բարկացաւ նոցա Տէր:

9 *Ել ծուխ ՝ի բարկութէ նորա. և հուր ՝ի բերանոյ նր կերիցէ. կայծակունք բորբոքեցան ՝ի նմանէ:

10 *Եւ խոնարհեցոյց զերկինս՝ և էջ. և մէգ ՝ի ներքոյ ոտից նորա:

11 *Ել և նստաւ ՝ի վերայ քերովբէից՝ և թռեաւ. և երևեցաւ ՝ի վերայ թևոց հողմոց:

12 *Եւ եդ զխաւար ծածկութի իւր. շուրջ զնովաւ խորան իւր. և խաւար ջրոց թանձրացոյց զամպս օդոց:

13 *Ի լուսոյն առաջի նր բորբոքեցան կայծակունք հրոյ:

14 *Եւ որոտաց յերկնից Տր. և բարձրեալն ետ զձայն իւր:

15 *Եւ առաքեաց զնետս իւր. և ցրուեաց զնս: փայլատակեցոյց զփայլատակունս՝ և զարհուրեցոյց զնոսա:

16 *Եւ երևեցան յորդութիք ծովու. և յայտնեցան հիմունք տիեզերաց՝ ՝ի սաստէ Տն. և ՝ի շնչելոյ հողմոյ բարկութե նորա:

17 *Առաքեաց ՝ի բարձանց՝ և էառ զիս. ձգեաց զիս ՝ի ջրոց բազմաց:

18 *Փրկեաց զիս ՝ի բռնութէ թշնամեաց իմոց. և յատելեաց իմոց. զի սաստկացան քան զիս:

19 *Ժամանեցին ինձ աւուրք նեղութե իմոյ. և եղև ինձ Տր հաստատութի:

20 *Եւ եհան զիս յանդորր. և ապրեցոյց զիս. զի հաճեցաւ ընդ իս:

21 *Եւ հատոյց ինձ Տր ըստ արդարութե իմում. և ըստ սրբութե ձեռաց իմոց հատուսցէ ինձ Տր:

22 *Զի պահեցի զճանապարհս Տն. և ոչ ամպարշտեցայ յԱյ իմմէ:

23 *Զի ամ իրաւունք նր առաջի իմ են. և յարդարութեց նր ոչ հեռացայ:

24 *Եւ եղէ նմա ամբիծ. և յառաջագոյն զգուշացայ յանօրէնութէ իմմէ:

25 *Եւ հատուսցէ ինձ Տր ըստ արդարութե իմում. և ըստ սրբութե ձեռաց իմոց առաջի աչաց նորա:

26 *Ընդ սրբոյն սբ եղիցիս. և ընդ առն կատարելոյ կատարեսցիս:

27 *Եւ ընդ ընտրելոյն ընտրեալ եղիցիս. և ընդ թիւրելոյն թիւրեսցիս:

28 *Զի դու զժողովուրդ տնանկ փրկեսցես. և զաչս ամբարտաւանից խոնարհեցուսցես:

29 *Զի դու ես ճրագ իմ Տր. և դու Տր լուսաւորեսցես ինձ զխաւար իմ:

30 *Զի քև ընթացայց մենազինեալ. և Այ իմով անցից ընդ պարիսպ:

31 *Տր Ած իմ հզօր. որոյ անարատ է ճանապարհ իւր. բան Տն հզօր քննեալ. վերակացու է ամ ապաւինելոց իւրոց:

Սաղ. 17. 3. — Սաղ. 17. 4.

*Ո՞վ է հզօր բաց 'ի քէն Տր՟. եւ ո՞վ է հաստիչ բաց յԱ՟յ մերմէ։ 32

*Հզօր որ զօրացուցանէ զիս զօրութեամբ. ձգեաց անարատ զճանապարհս իմ։ 33

*Պնդել զոտս իմ իբրեւ եղջերուաց. եւ 'ի վերայ բարձանց կացուցանէ զիս։ 34

‖ Սաղմ. 143.1. *‖ Ուսուցանէ զձեռս իմ 'ի պատերազմ. եւ հաստատեաց իբրեւ զաղեղն պղնձի զբազուկս իմ։ 35

*Եւ ետուր ինձ զպաշտպանութի՟ փրկութե՟ իմոյ։ եւ հնազանդութիւն իմ յաճախեաց ինձ։ 36

*Ընդարձակութի՟ 'ի ներքոյ գնացից իմոց. եւ ո՛չ սասանեցան բարձք իմ։ 37

*Հալածեցից զթշնամիս իմ, եւ ապականեցից զնոսա. եւ ոչ դարձայց, մինչեւ սպառեցից զնոսա։ 38

*Խորտակեցից զնոսա՝ եւ մի՛ կանգնեսցին. անկցին 'ի ներքոյ ոտից իմոց։ 39

*Եւ զօրացուցես զիս զօրութե՟ 'ի պատերազմ. եւ կորացուցես 'ի ներքոյ իմ զյարուցեալսն 'ի վերայ իմ։ 40

*Եւ զթշնամիս իմ դարձուցեր յետս յինէն. եւ զատելիս իմ կոտորեցեր։ 41

*Աղաղակեսցեն՝ եւ ո՛չ ոք իցէ որ օգնեսցէ. առ Տր՟՝ եւ ո՛չ լուաւ նոցա։ 42

*Եւ լեսի զնո՟ իբրեւ զհող երկրի. եւ իբրեւ զկաւ գնեհաց մանրեցից զնո՟։ 43

*Եւ փրկեսցես զիս 'ի կռուոյ ժողովրդոց. եւ պահեսցես զիս 'ի գլուխ ազգաց։ ժողովուրդ՝ զոր ոչ գիտէի՝ ծառայեաց ինձ։ 44

*(Որդիք օտարոտիք ստեցին ինձ։) եւ 'ի լուր ունկան լուաւ ինձ։ 45

*Որդիք օտարոտիք ընկեսցին 'ի բաց. եւ սխալեսցին 'ի պաշարման իւրեանց։ 46

*Կենդանի է Տր՟՝ եւ օրհնեալ է պահապանն իմ. եւ բարձրասցի Ա՟ծ իմ պահապան փրկութե՟ իմոյ։ 47

*Հզօր Տր՟. որ առնէ զվրէժխնդրութի՟. խրատէ զժողովուրդս 'ի ներքոյ իմ։ 48

*Եւ հանէ զիս 'ի թշնամեաց իմոց. եւ յարուցելոց 'ի վերայ իմ բարձրացուցես զիս ‖ յառնէ անիրաւութե՟ց փրկեսցես զիս։ 49

‖ Սաղմ. 17. 49.

‖ Հռովմ. 15.9. *‖ Վասն այսորիկ գոհացայց զքէն 'ի մէջ ազգաց Տր՟. եւ անուան քում սաղմոս ասացից։ 50

*Մեծացուցանէ զփրկութի՟ թագաւորի. եւ առնէ ողորմութի՟ օծելոյ իւրում Դաւթի՝ եւ զաւակի նո՟ մինչեւ յաւիտեան։ 51

## ԳԼ: ԻԳ։

Եւ այսոքիկ են բանք Դաւթի վերջինք. Հաւատարիմ Դաւիթ որդի Յեսսեայ. եւ հաւատարիմ այր. զոր կացոյց Տր՟ յօծեալ Ա՟յ 'ի վր՟ Յակոբայ։ եւ վայելուչք են երգք Իղի՟։ 2 *Հոգի Տն՟ խօսեցաւ յիս. եւ բան նո՟ 'ի լեզուի իմում։ 3 *Ասէ Ա՟ծ Իղի՟։ ընդ իս խօսեցաւ պահապանն Իղի՟. առակութ ասացի 'ի մարդ՝ ո՞վ է՝ որ կալցի զերկիւղէ Տն՟ եւ զԱ՟յ։ 4 *Ի լոյս առաւօտու ծագեալ զարեգակն է՟ առաւօտու՝ եւ ո՛չ նուաղեցաւ 'ի լուսոյ. եւ իբրեւ անձրեւոյ դալարւոյ յերկրէ։

5 *Զի ո՛չ եթէ այս տուն իմ է ը՟ հզօրին Ա՟յ։ ուխտ յաւիտենական եդ ինձ. պատրաստական յա՟մ ժամանակի պահել։ զի ա՟մ փրկութի՟ իմ, եւ ա՟մ կամք իմ Տր՟. զի մի՛ բողբոջեսցի։ [margin: է Տր՟] 6 *Անօրէնք իբրեւ զփուշ մերժեալք են. ամենեքին նոքա՝ որք ո՛չ ձեռամբ առնուցուն։ 7 *Եւ աշխատեսցի 'ի նո՟ այր. եւ զա՟մ երկաթ եւ զփայտ նիզակի հրով այրեսցէ. եւ բորբոքեսցին ամօթով իւրեանց։ 8 *‖ Այս անուանք են զօրաւորացն Դաւթի։ յեբուսթէ քանանացի՝ իշխան երիր մասինն։ աքինօն ամօնացի. 'ի վր՟ ութհարիւրոյ վիրաւորաց 'ի միում նուագի։ 9 *Եւ յետ նր՟ Եղէազար որդի հօրեղբօր նր՟՝ որդի սովսացւոյն. 'ի մէջ երից զօրավարացն Դաւթի. յուեմայ 'ի նախատել նր՟ զայլազգիս. ուր գումարեցան 'ի պատերազմ։ 10 *Եւ խրախուսեաց այր Իղի՟։ նա յարեաւ. եւ եհար յայլազգեացն՝ մինչեւ մաշեցաւ ձեռն նր՟ սրովն։ եւ արար Տր՟ փրկութի՟ մեծ յաւուր յայնմիկ. եւ զօրն նստէր յետոյ նր՟. բայց միայն 'ի կապուտն։ 11 *Եւ յետ նր՟ սամմա որդի սխայ արուկացի։ եւ ժողովեցան այլազգիքն 'ի ծնօտն. եւ անդ էր վիճակ անդի լի ոսպամբ. եւ զօրն փախեաւ յերեսաց այլազգեացն։

‖ 1. Մն՟ 11.10.

[margin: եւ զօրն որ նստէր յետոյ նր՟ դարձան 'ի ժողովել զկապուտն]

12 *Եւ արձանացաւ 'ի մէջ վիճակին. եւ ապրեցոյց զնա. եւ եհար զայլազգիսն. եւ արար Տր՟ փրկութի՟ մեծ։ 13 *Եւ իջին երրորդ յերեսնից. եւ իջին 'ի կասովայ առ Դաւիթ՝ յայրն ոդողոմայ։ գունդք այլազգեացն բանակեալ էին 'ի հովիտս ռափայնոյն։ 14 *Եւ Դաւիթ էր յայնժամ յամրոցին, եւ ճամբար այլազգեաց էր յայնժամ 'ի բեթղեհէմ։ 15 *Եւ ցանկացաւ Դաւիթ՝ եւ ասէ. ո՛ արբուցանէր ինձ ջուր 'ի ջրհորոյն բեթղեհէմի՝ որ առ դրանն է։ 16 *Եւ գունդք այլազգեացն էին 'ի բեթղէհէմ. եւ հատին երրորդ զօրավարք զբանակն այլազգեաց՝ եւ հանին ջուր 'ի ջրհորոյն բեթղեհէմի. որ առ դրանն. եւ առին՝ եւ եկին առ Դաւիթ. եւ ո՛չ կամեցաւ ըմպել զայն. այլ նուիրեաց զայն Տն՟։ [margin: երեք] 17 *Եւ ասէ. քաւ լիցի ինձ Տր՟ առ_

առնել զայդ. եթէ զարիւն արանց
երթելոց ոգւովք չափ՝ ըմպիցեմ. և
ոչ կամեցաւ ըմպել զայն: զայս արա-
րին երեք զօրաւորքն: * Եւ աբեսսա 18
եղբայր յովաբայ որդի շարուհեայ.
ինքն իշխան 'ի մէջ երիցն. և նա կանգ-
նեաց զնիզակն իւր 'ի վ̃ր երեք հար-
իւրոց վիրաւորաց. և նորա անուն յե-
րիսն: * 'Ի մէջ երիցն յայնցանէ փա- 19
ռաւորեալ. և եղև նոցա իշխան. և
մինչև յերիսն ոչ եհաս: * Եւ բանեա 20
որդի յովիդեայ որդի առն զօրաւորի.
որոյ բազում գործ գործեալ էր 'ի կա
բեէլայ. և նա եհար զերկուս որդիսն
ադրիէլի մովաբացւոյ: և նա էջ՝ և
սպան զառիւծն 'ի մէջ գբոյն, յաւուր
ձեան: * Եւ նա սպան զայրն երևելի՝ 21
զայրն եգիպտացի. և 'ի ձեռին եգիպ
տացւոյն էր նիզակ իբրև զփայտ կամր
ջի. և էջ առ նա նիզակաւն. և յափշ-
տակեաց զնիզակն 'ի ձեռաց եգիպ-
տացւոյն. և սպան զնա նորին նիզա-
կաւ: * Զայս արար բանեա որդի յո 22
վիդեայ: * Եւ նորա անուն 'ի մէջ 23
երիցն զօրաւորաց: յերիցն փառաւո
րեալ. և առ երիսն ոչ հասանէր: և
կարգեաց զնա դաւիթ 'ի վերայ համ
բաւոց իւրոց: և այս անուանք են զօ
րաւորացն դաւթի արքայի: * Ասայէլ 24
եղբայր յովաբայ. նա էր 'ի մէջ երես
նիցն: եղէանան. որդի ելիուդայ հօր
եղբօր նր 'ի բեթղէհէմէ: * Սամաա 25
ռուդացի: սելլամ կեղովթացի:
* Ելլաս փելլատացի: իրաս՝ որդի ես- 26
կաթայ թեկուացի: * Աբիեզեր ա- 27
նաթովթացի՝ յորդւոց ասովթաց-
ւոյն: * Սելոն աղիոյացի: նոերէ նե- 28
տոփաթացի: * Ելափ, որդի փամփա 29
նայ: անատէ նեփլաթացի: եթթի,
որդի ռիբայ 'ի գաբաեթայ որդւոցն
բենիամինի եփրաթացւոյ: * Ադդայի 30
'ի ձորոյն գովասայ: * Աբիելբօն 'ի 31
դաշտավայրացն ադդայի 'ի նաքալայ:
գաաբիէ լադաբարացի: ասմօն բար-
սամացի: * Եղիաս սաղաբոնացի՝ որդի 32
ասանայ. յովնաթան: * Սամնան ա- 33
րովդացի: եղիան, որդի արեդայ ա-
րաթիրացի: * Ալիփաղէթ, որդի ա- 34
սբացւոցն՝ որդի ամաքայ եղիաբ.
որդի աքիտոփելայ գաղամոնացւոյ:
* Ասարէ կարմելացի: տուուր երքա- 35
ցի: * Իգաղ, որդի նաթանայ 'ի զօ- 36
րութէ: որդի գաղաադայ: * Եղիէ 37
ամմօնացի: գելովրէ բէերովթացի
կապարճակիր յովաբայ որդւոյ շարու-
հեայ: * Իրաս յեթերացի: գարէբ 38
բեթթանացի: * Ուրիա քետացի: 39
ընդ ամենայն երեսուն և եօթն (այլք

'ի հեղեղատէն գաղաբիէլի որդւոյ
արաբովթացւոյն:)

## ԳԼ: ԻԴ.

1 Եւ յաւել սրտմտութի Տն բոր- Ա.Մն. 21.1.
բոքել 'ի վ̃ր իէլի. և գրգռեաց
զդաւիթ 'ի նս՝ և ասէ. երթ՝ թուեա
2 զիսրայէլ՝ և զյուդա: * Եւ ասէ ար
քայ ցյովաբ իշխան զօրուն՝ որ ընդ
նմա. շրջեա՛ց ընդ ա̃մ ցեղսն իէլի 'ի
դանայ մինչև ցբերսաբէէ. և հան-
դէս արա ժողովրդեանդ. և գիտացից
3 զթիւ դոցա: * Եւ ասէ յովաբ ցարքայ.
յաւելցէ Տր Ա̃ծ 'ի ժողովուրդն որ-
չափ ենն՝ հարիւրապատիկ: և տեսցեն
աչք տեառն իմոյ արքայի. և տէր իմ
արքայ ընդէ՞ր կամիցի զբանդ զայդ:
4 * Եւ սաստկացաւ բանն արքայի առ
յովաբ՝ և առ իշխանս զօրուն: և ել
յովաբ՝ և ա̃մ իշխանք զօրութե յերե
սաց արքայի առնել հանդէս ժողովր
5 դեանն իսրայէլի: * Եւ անցին ընդ
յորդանան. և պատեցան ընդ արոէր
յաջմէ քաղաքին. որ 'ի մէջ ձորոյն
6 գադայ և եղէազարու: * Եւ անցին
ընդ գաղաադ. և 'ի թաբասօն. և յեա
թօն. և յադասէ. և հասին 'ի դան. և
7 պատեցան զսիդօնաւ: * Եւ եկին 'ի
մափսար տիւրոսի. և յա̃մ քաղաքս
խևացւոյն. և քանանացւոցն: և եկին
'ի հարաւոյ կողմանէ 'ի յուդայ և 'ի
8 բերսաբէէ: * Եւ շրջեցան ընդ ա̃մ
երկիրն. և եկին՝ հասին 'ի կատարել
ինն ամսոց՝ և աւուրց քսանից՝ յե̃մ:
9 * Եւ ետ յովաբ զհամար հանդիսի ժո
ղովրդեանն արքայի: և եղև իէլի ութ
հարիւր հազար արանց զօրու սուսե-
րամերկաց: և այր յուդայ հինգ հար-
10 իւր հազար արանց մարտկաց: * Եւ
եհար զդաւիթ սիրան իւր յետ թուե
լոյ զժողովուրդն և ասէ դաւիթ ցՏր:
մեղայ յոյժ. զոր արարի. և արդ անցո՛
զանօրէնութի 'ի ծառայէ քումմէ: զի
11 ընդունայնացայ յոյժ: * Եւ յարեաւ
դաւիթ ընդ առաւօտն: և բան Տն
եղև 'ի վ̃ր գադայ մարգարէին տեսա
12 նողի առ դաւիթ՝ և ասէ: * Երթ՝
խօսեաց ընդ դաւթի, և ասասցես:
այսպէս ասէ Տր. երիս ինչս ասեմ 'ի
վ̃րքո. և ընտրեսցես քեզ զմի 'ի նոցա
13 նէ՝ և արարից քեզ զայն: * Եւ եմուտ
գադ առ դաւիթ. և պատմեաց նմա.
և ասէ ցնա: ընտրեա՛ քեզ լինել. եթէ
եկեսցէ սով զերիս ամս յերկիր քո:
կամ՝ զերիս ամիս փախչիլ յերեսաց
թշնամեաց քոց: և լինիցին հալածել
զքեզ. կամ լինել զերիս աւուրս մահ
յերկրի քում. և արդ ծանիր՝ և տես.

զի՞նչ պատասխանի տաց առաքչին իմոյ։ 14 *Եւ ասէ դաւիթ ցգադ. վտանգ է ինձ յամենայն կողմանց յոյժ։ ‖ բայց արդ անկեայց 'ի ձեռս Տ̅ն. զի բազում են գթութիւնք նորա յոյժ. և մի՛ անկեայց 'ի ձեռս մարդոյ։ (և ընտրեաց իւր դաւիթ զմահն. և էին աւուրք հնձոց ցորենոյ։) 15 *Եւ ետ Տ̅ր մահ յիսրայէլ յառաւօտէ մինչև ցճաշաժամ. և սկսաւ սատակումն 'ի ժողովրդեանն. և մեռաւ 'ի ժողովրդենէ անտի 'ի դանայ մինչև ցբերսաբէէ եօթանասուն հազար արանց։ 16 *Եւ ձգեաց հրեշտակն Ա̅Յ զձեռն իւր յԵ̅Մ ապականել զնա։ և մխիթարեցաւ Տ̅ր 'ի վ̅ր չարեացն. և ասէ ցհրեշտակն, որ ապականէր զժողովուրդն. շատ է. արդ ամփոփեա՛ զձեռն քո։ և հրեշտակն Տ̅ն կայր առ կալոյն ոռնեայ յեբուսացւոյ։ 17 *Եւ ասէ դաւիթ ցՏ̅ր. իբրև ետես զհրեշտակն՝ որ հարկանէր զժողովուրդն, ասէ՝ աւասիկ կամ. ես մեղայ. ես հովի՛ւս յանցեայ. և դոքա ոչխարքդ զի՞ արարին։ եղիցի ձեռն քո յիս՝ և 'ի տուն հօր իմոյ։ 18 *Եւ եկն գադ առ դաւիթ յաւուր յայնմիկ՝ և ասէ ցնա. ել. և կանգնեա՛ Տ̅ն սեղան 'ի կալն ոռնեայ յեբուսացւոյ։ 19 *Եւ ելդաւիթ ըստ բանին գադայ. որպէս և պատուիրեաց նմա Տ̅ր։ 20 *Եւ խոնարհեցաւ ոռնա իբրև ետես զարքայ և զծառայս նր̅ երթեալս առ նա։ և ել ոռնա և երկիրպագ Տ̅ն 'ի վ̅ր երեսաց իւրոց յերկիր։ 21 *Եւ ասէ ոռնա. զի՞ է զի եկն տէր իմ արքայ առ ծառայ իւր։ և ասէ դաւիթ. գնել 'ի քէն զկալս. շինել սեղան Տ̅ն. զի դադարեսցի ապականութի̅ 'ի ժողովրդենէն։ 22 *Եւ ասէ ոռնա ցդաւիթ։ առցէ՝ և մատուսցէ տէր իմ արքայ Տ̅ն. որպէս և հաճոյ իցէ առաջի աչաց նորա։ ահաւասիկ եզինքս յողջակէզ. և անի՛ւրքդ՝ և կահ եզանցդ 'ի փայտ։ 23 *Զամ՝ ետ ոռնա արքայի։ և ասէ ոռնա ցարքայ. Տէր Ա̅Ծ քո օրհնեսցէ զքեզ։ 24 *Եւ ասէ արքայ ցոռնա. ո՛չ այդպէս. այլ գնելով գնեցից 'ի քէն գնոց. և ո՛չ մատուցից Տ̅ն Ա̅Յ իմոյ ողջակէզս ձրի։ և գնեաց դաւիթ զկալն և զեզինսն արծաթոյ յիսուն սկեղ։ 25 *Եւ շինեաց անդ դաւիթ զսեղան Տ̅ն Ա̅Յ. և եհան ողջակէզս և խաղաղականս 'ի վ̅ր նր̅։ (և յաւել սաղոմոն՝ 'ի սեղանն յետոյ՝ զի փոքր էր զառաջինն.) և լուաւ Տ̅ր երկրին և արգելաւ սատակումն յիսրայէլէ։

‖ 1. Մն̅ա 21. 13. Գ̅աւ̅է. 13. 23.



Եւ ասէ արքայ, հերձէք զմանուկն զստնդիայ զկենդանին՝ յերկուս ։ 3. Թագ. 3. 25.



Եւ տունն զոր շինեաց արքայ Սողոմոն Տն, վաթսուն կանգուն երկայնութիւն նր ։ 3. Թագ. 6. 2.

# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐԱՑ։

## ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑԻՈՑՆ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ՄԱՂԱՔԻՄ․ ԱՅՍ Է ԹԱԳԱՒՈՐԱՑ։

### Գլուխ Առաջներորդ ։

1 ԵՒ ԱՐՔԱՅ ԴԱՒԻԹ ծերացեալ և անցեալ զաւուրբք ։ և ծածկէին զնա հանդերձիւք ․ և ոչ ջեռնոյր ։ 2 *Եւ ասեն ծառայք նորա ․ խնդրեսցեն տն մերոյ արքայի աղջիկ մի կոյս ․ և կացցէ առաջի արքայի ․ և եղիցի դարմանել ․ և ննջեսցէ ընդ նմա ․ և ջեռուսցի տէր մեր արքայ ։ 3 *Եւ խնդրեցին աղջիկ մի գեղեցիկ յամ սահմանացն Իէլի ․ և գտին զԱբիսակ Սոմնացի ․ և ածին զնա առ արքայ ։ 4 *Եւ էր աղջիկն գեղեցիկ յոյժ ․ և ջեռուցանէր զարքայ՝ և պաշտէր զնա ։ և արքայ ոչ գիտաց զնա ։ 5 *Եւ Ադոնիա որդի Անգիթայ ամբառնայր ։ ասէ ․ Ես թագաւորեցից ։ և արար իւր կառս և հեծեալս ․ և յիսուն այր սուրհանդակս ընթանալ առաջի նորա ։ 6 *Եւ հայրն ոչ արգելոյր զնա ․ և ոչ երբէք ասէր , թէ ընդէր արարեր զայդ ։ և ինքն էր գեղեցիկ տեսլեամբ ․ և զնա ծնաւ յետ Աբեսաղոմայ ։ 7 *Եւ եղեն բանք նորա ընդ Յովաբայ որդւոյ Շարուհեայ ․ և ընդ Աբիաթարայ քահանայի ։ և օգնէին Ադոնիայ ։ 8 *Եւ Սադովկ քահանայ ․ և Բանեա որդի Յովիդեայ ․ և Նաթան մարգարէ ․ և Սեմէի ․ և Ռէի ․ և որդիք զօրաւորք Դաւթի՝ չէին զհետ Ադոնիայ ։ 9 *Եւ եզեն Ադոնիա ոչխարս՝ և եզինս՝ և գառինս՝ առ վիմին Զովելեթայ ․ որ է մօտ յԵրկիրն առ Հօթ աղ գելայ ․ և կոչեաց զամ զեղբարս իւր՝ Եէին

զորդիս

զորդիս արքային. և զամ զարս յուդայ՝
զծառայս արքային: * 10 Եւ զնաթան
մարգարէ. և զբանեա. և զզօրաւորսն.
և զսաղոմոն զեղբայր իւր ոչ կոչեաց:
* 11 Եւ խօսեցաւ նաթան մարգարէ ընդ
բերսաբեայ՝ մօր սաղոմոնի՝ և ասէ.
ոչ լուա՞ր՝ զի թագաւորեաց ադոնիա
որդի ագիթայ. և տէր մեր արքայ դա
ւիթ ոչ գիտաց: * 12 Եւ արդ եկ՝ տաց
քեզ խրատ. և ապրեցուսցես զանձն
քո. և զանձն որդւոյ քոյ սաղոմոնի:
* 13 Երթ՝ և մուտ առ արքայ դաւիթ.
և խօսեսցիս ընդ նմա՝ և ասասցես:
ոչ դու տէր իմ արքայ՝ երդուա՞ր ա
ղախնոյ քում. և ասացեր. թէ սաղո
մոն որդի քո թագաւորեսցէ յետ իմ:
և նա նստցի յաթոռ իմ. և այն զինչ
է, զի թագաւորեաց ադոնիա: * 14 Եւ
ահա մինչդեռ դու խօսիցիս անդ ընդ
արքային, ես մտից. և լցից զբանս քո:
* 15 Եւ եմուտ բերսաբեէ առ արքայ 'ի
սենեակն. և արքայ ծերացեալ էր
յոյժ: և աբիսակ սունամացի կայր 'ի
պաշտօն արքային: * 16 Խոնարհեցաւ բեր
սաբեէ՝ և երկիր եպագ արքային: և
ասէ արքայ. զի՞ է քեզ: * 17 Եւ նա ասէ:
տէր իմ արքայ. դու երդուա՞ր 'ի Տէր
Այ քո՝ աղախնոյ քում, և ասացեր.
թէ սաղոմոն որդի քո թագաւորեսցէ
յետ իմ. և նա նստցի յաթոռ իմ:
* 18 Եւ ահա ադոնիա թագաւորեաց.
և դու տէր իմ արքայ ոչ գիտացեր:
* 19 Եւ եզեն արջառս՝ և ոչխարս՝ և գա
ռինս բազումս. և կոչեաց զամ որդիս
արքային. և զաբիաթար քահանայ. և
զյովաբ իշխան զօրուն: և զսաղոմոն
զծառայ քո ոչ կոչեաց: * 20 Եւ տէր
իմ արքայ՝ աչք ամ իղի 'ի քեզ են.
պատմել նց թէ ո՞ նստցի յաթոռ տն
իմոյ արքայի յետ նորա: * 21 Եւ եղիցի,
եթէ ննջեսցէ տէր իմ արքայ ընդ
հարս իւր, լինիցիմ ես՝ և որդի իմ սա
ղոմոն վնասապարտք: * 22 Եւ մինչդեռ
նա խօսէր ընդ արքային, եկն նաթան
մարգարէ: * 23 Եւ պատմեցաւ արքային,
ասեն՝ ահաւասիկ նաթան մարգարէ: և
եմուտ առաջի արքային. և երկիր ե
պագ արքային 'ի վղ երեսաց իւրոց յեր
կիր: * 24 Եւ ասէ նաթան: տէր իմ ար
քայ. դու՞ ասացեր եթէ ադոնիա թա
գաւորեսցէ զկնի իմ. և նա նստցի յա
թոռ իմում: * 25 Զի էջ այսօր. և ե
զեն արջառս՝ և ոչխարս՝ և գառինս
բազումս. և կոչեաց զամ որդիսն ար
քային. և զիշխանս զօրուն. և զաբիա
թար քահանայ. և ահա ուտեն՝ և ըմ
պեն առաջի նորա. և ասեն՝ կեցցէ ար
քայ ադոնիա: * 26 Եւ զիս զծառայ քո՝
և զսադովկ քահանայ՝ և զբանեա որ
դի յովիդեայ՝, և զսաղոմոն զծառայ
քո ոչ կոչեաց: * 27 Եթէ 'ի ձեռն տն
իմոյ արքայի եղև բանն այն. և ոչ ցու
ցեր ծառայի քում, թէ ո՞ նստցի յա
թոռ տեառն իմոյ արքայի յետ նր:
* 28 Պատասխանի ետ դաւիթ արքայ՝ և
ասէ: կոչեցէք առ իս զբերսաբեէ: և
եմուտ առաջի նորա. և եկաց յանդի
ման նր: * 29 Եւ երդուաւ արքայ՝ և ա
սէ. կենդանի է Տր. որ փրկեաց զանձն
իմ 'ի նեղութէ: * 30 Զի որպ երդուայ 'ի
Տր Այ իղի՝ և ասեմ. եթէ սաղոմոն
որդի քո թագաւորեսցէ յետ իմ, և
նա նստցի յաթոռ իմ՝ փոխանակ իմ,
եթէ ոչ այսպէս արարից յաւուրս յայս
միկ: * 31 Եւ խոնարհեցաւ բերսաբեէ
'ի վղ երեսաց իւրոց յերկիր. և երկիր
եպագ արքային՝ և ասէ. կեցցէ տէր
իմ արքայ դաւիթ յաւիտեան: * 32 Եւ
ասէ արքայ դաւիթ. կոչեցէք առ իս
զսադովկ քահանայ. և զնաթան մար
գարէ. և զբանեա որդի յովիդեայ:
և մտին առաջի արքային: * 33 Եւ ասէ ցնս
արքայ: առէք ընդ ձեզ զծառայս տն
ձերոյ: և հեծուցէք զսաղոմոն զորդի
իմ 'ի ջորւոջն իմում. և իջուցէք զնա
'ի գեհոն: * 34 Եւ օծցեն զնա անդ սա
դովկ քահանայ՝ և նաթան մարգարէ
'ի թագաւոր 'ի վերայ իղի: և փող
հարէք եղջերաւն՝ և ասասջի՞ք՝ կեցցէ
արքայ սաղոմոն: * 35 Եւ ելջի՞ք զկնի
նորա. և մտցէ, և նստցի յաթոռ ի
մում. և նա թագաւորեսցէ ընդ իմ.
և ես ետու հրաման լինել նմա առաջ
նորդ 'ի վերայ իղի՝ և յուդայ: * 36 Եւ
պատասխանի ետ բանեա որդի յովի
դեայ արքային՝ և ասէ. եղիցի այդպ.
հաւաստարմացուսցէ Տր Այ տեառն
իմոյ արքայի: * 37 Եւ որպէս էր Տր ընդ
տեառն իմոյ արքայի՝ եղիցի և ընդ
սաղոմոնի. և մեծացուսցէ զաթո
ռն՝ քան զաթոռ տեառն իմոյ արքայի
դաւթի: * 38 Եւ էջ սադովկ քահանայ
և նաթան մարգարէ՝ և բանեա որդի
յովիդեայ. և քերեթին՝ և ոփելե
թին. և հեծուցին զսաղոմոն 'ի ջոր
ւոջն արքայի դաւթի. և տարան զնա
'ի գեհոն: * 39 Եւ էառ սադովկ զեղ
ջիւրն իւղոյ 'ի խորանէն. և օծ զսա
ղոմոն. և եհար զփողն եղջերեայ. և
ասէ ամ ժողովուրդն՝ կեցցէ արքայ
սաղոմոն: * 40 Եւ ել ամ ժողովուրդն
զհետ նորա. և պար առեալ պարուք՝
ուրախ լինէին մեծաւ ուրախութբ.
և հնչեաց երկիրն 'ի բարբառոյ նոցա:
* 41 Եւ լուաւ ադոնիա՝ և ամ բազմա
կանք նորա. և կատարեցին նոքա զու
տելն

տելն. և լուաւ յովաբ զձայն եղջերոյն՝
և ասէ. զի՞նչ է բարբառն՝ որ հնչէ
՚ի քաղաքին: * Եւ մինչդեռ նա խօ_ 42
սէր, ահա յովնաթան՝ որդի աբիա_
թարու քահանայի՝ եհաս. և ասէ ա_
դոնիա. մուտ՝ զի այր զօրութեան ես
դու. և բարութիւն աւետարանես:
* Պատասխանի ետ յովնաթան՝ և ա_ 43
սէ ցադոնիա. և կարի իսկ քաջ, Տէր
մեր արքայ դաւիթ թագաւորեցոյց
զսաղոմոն: * Եւ առաքեաց ընդ նմա 44
արքայ զսադովկ քահանայ. և զնա_
թան մարգարէ. և զբանեա որդի յո_
վիդեայ. և զքերեթին՝ և զփելե_
թին. և հեծուցին զնա ՚ի ջորւոջն ար_
քայի: * Եւ օծին զնա սադովկ քահա_ 45
նայ՝ և նաթան մարգարէ ՚ի թագաւ_
որ ՚ի գեհոն. և ելին անտի ուրախու_
թբ՝ և հնչեաց քաղաքն. և այն է բար_
բառն՝ զոր լուա՛յք: * Եւ նստաւ սա_ 46
ղոմոն յաթոռն արքայութեան: * Եւ 47
մտին ծառայքն արքայի օրհնել զտէր
մեր զարքայ դաւիթ՝ և ասեն. մեծա_
ցուսցէ Տէր զանուն սաղոմոնի որդւոյ
քոյ՝ քան զանուն քո. և մեծացուսցէ
զաթոռ նր քան զաթոռ քո. և երկիր
եպագ արքայ յանկողնի իւրում: * Եւ 48
այսպէս ասաց արքայ. օրհնեալ է Տէր
Ած իէլի. որ ետ ինձ այսօր ՚ի զաւա_
կէ իմմէ նստել յաթոռ իմ. և աչք իմ
տեսանեն: * Եւ զարհուրեցան. և 49
յարեան ամ կոչնականքն ադոնիայ.
և գնացին այր իւրաքանչիւր զճանա_
պարհ իւր: * Եւ ադոնիա երկեաւ յե_ 50
րեսաց սաղոմոնի. և յարեաւ չոգաւ.
և բուռն եհար զեղջերաց սեղանոյն:
* Եւ ազդ եղև սաղոմոնի՝ և ասեն. 51
ահա ադոնիա երկեաւ յարքայէ սա_
ղոմոնէ. և ունի զեղջերաց սեղանոյն՝
և ասէ. երդուիցի ինձ այսօր արքայ
սաղոմոն՝ եթէ ոչ սպանցէ զծառայ
իւր սրով: * Եւ ասէ սաղոմոն՝ եթէ 52
լինիցի յորդի զօրութեան՝ ոչ անկցի ՚ի
հերոյ նորա մազ մի ՚ի գետին. ապա
թէ չարութիւն գտցի ՚ի նմա՝ մահու
մեռցի: * Եւ առաքեաց արքայ սա_ 53
ղոմոն. և իջոյց զնա ՚ի վերուստ ՚ի սե_
ղանոյ անտի. և եմուտ երկիր եպագ
արքայի սաղոմոնի. և ասէ ցնա սաղո_
մոն. երթ ՚ի տուն քո:

## Գլ. Բ.

Եւ մերձեցան աւուրք դաւթի մե_ 1
ռանելոյ. և պատասխանի ետ
սաղոմոնի որդւոյ իւրում, և ասէ:
* Ես երթամ զճանապարհ ամենայն 2
երկրի. և դու զօրասցիս՝ և եղիցիս
այր: * Եւ պահեսցես զպահպանու_ 3
թիւն Տն Այ քոյ՝ գնալ ՚ի ճանապարհս
նորա. և պահել զպատուիրանս նր՝ և
զիրաւունս՝ և զդատաստանս՝ և ըզ
վկայութիւնս նորա. ‖ զգրեալս յօրէնս ‖2. Օրէ.
մովսէսի. զի ՚ի միտ առնուցուս՝ զոր 17. 19.
առնիցես. ըստ ամի զոր պատուիրեմ
4 քեզ: * Զի հաստատեսցէ Տր զբան
իւր. զոր խօսեցաւ վասն իմ, և ասէ.
եթէ պահեսցեն որդիք քո զճանա_
պարհս իւրեանց գնալ առաջի իմ ճշ_
մարտութբ յամ սրտէ իւրեանց՝ և
յամենայն անձնէ իւրեանց. ասէ. մի՛
սատակեսցի այր յաթոռոյ իէլի:
5 * Եւ դու ինքնին գիտես, զոր ինչ
արար ինձ յովաբ որդի շարուհեայ. և
զոր ինչ արար ընդ երկուս իշխանս զօ_
րաց իէլի. ‖ ընդ աբեններ որդի նե_ ‖2 Թագ
րեայ. և ‖ ընդ ամեսայի որդի յեթե_ 3. 27.
րայ. և սպան զնոսա. և խնդրեաց զար_ ‖2 Թագ
իւն պատերազմի ՚ի խաղաղութե. և 20. 10.
ետ զարիւն անպարտ ՚ի կեանս իւր_
ում՝ ՚ի մէջս իւր. և ՚ի կօշիկս ոտից իւր_
6 ոց: * Եւ արասցես ըստ իմաստութե_
քում. և ոչ իջուսցես զալիս նորա խա_
7 ղաղութբ ՚ի դժոխս: * Եւ որդւոցն
բերզելեայ գաղաադացւոյ արասցես
ողորմութիւն. և եղիցին ընդ այնոսիկ՝
որք ուտիցեն ՚ի սեղանոյ քումմէ. ‖ զի ‖2 Թագ
այնպ մերձեցան յիս ՚ի փախչել իմում, 19. 31.
յերեսաց աբեսաղոմայ եղբօր քոյ:
8 * ‖ Եւ ահա ընդ քեզ է սեմէի՝ որդի ‖2 Թագ
գերեայ՝ որդւոյ յեմինայ բաւուրի_ 16. 5. և
մացւոյ. և նա անէծ զիս յանէծս ցա_ 19. 19.
ւագինս. յաւուր յորում գնացեալ
երթայի ՚ի բանակս. և նա էջ ընդա_
ռաջ իմ ՚ի յորդանան. և երդուայ նմա
՚ի Տր՝ և ասեմ. եթէ ոչ սպանից զքեզ
9 սրով: * Եւ մի՛ անպարտ առնիցես զնա.
զի այր իմաստուն ես դու. գիտասջի՛ր
ոնպ առնիցես նմա. և իջուսցես զալիս
10 նորա արեամբ ՚ի դժոխս: * ‖ Եւ նն_ ‖Գործ.
ջեաց դաւիթ ընդ հարս իւր՝ և թա_ 2. 29. և
11 ղեցաւ ՚ի քաղաքի դաւթի: * ‖ Եւ 13. 36.
աւուրք՝ զորս թագաւորեաց դաւիթ ‖2 Թագ
՚ի վր իէլի՝ ամք քառասուն: ՚ի քեբ_ 5. 4.
րոն թագաւորեաց ամս եօթն: և յե_ 1. Մնա.
րուսաղէմ թագաւորեաց ամս երե_ 27. 29.
12 սուն և երիս: ‖ * Եւ սաղոմոն նստաւ ‖1. Մնա
յաթոռ դաւթի հօր իւրոյ՝ ամաց եր_ 29. 23.
կոտասանից. և պատրաստեցաւ թա_
13 գաւորութիւն նորա յոյժ: * Եւ եմուտ
ադոնիա որդի ագիթայ առ բերսա_
բէէ մայր սաղոմոնի. և երկիր եպագ
նմա. և ասէ, խաղաղութիւն է մուտ_
14 քո. և ասէ՝ խաղաղութիւն է: * Եւ ա_
սէ՝ բանք ինչ են իմ ընդ քեզ. և ասէ՝
15 խօսեա՛ց: * Եւ ասէ ցնա՝ դու ինքնին
գիտես. զի իմ էր թագաւորութիւն.
և

և յիմ՛ վ՞ր եդ ՚ամ՛ ինչ զերեսս իւր ՚ի Թագաւորէ . և դարձաւ Թագաւորու_ Թ՞ն . և եղև եղբօր իմում . զի ՚ի Տ՞է եղև նմա : 16 *Եւ՛ արդ խնդիր մի խնդ_ րեմ՛ ՚ի քէն . մի դարձուցաներ զերեսս քո յինէն : և ասէ ցնա Բերսաբէէ՛ խօ_ սեաց : 17 *Եւ՛ ասէ ցնա՛ ասասցես ցսա_ ղոմոն արքայ , զի ոչ դարձուսցէ զե_ րեսս իւր ՚ի քէն . և տացէ ինձ զաբի_ սակ սոմնացի կնութե՞ : 18 *Եւ՛ ասէ Բերսաբէէ՛ բարւոք է . ես խօսեցայց վասն քո ընդ արքայի : 19 *Եւ՛ եմուտ Բերսաբէէ առ արքայ սաղոմոն խօ_ սել ընդ նմա վ՞ն ադոնիայ . և յոտն ե_ կաց արքայ ընդառաջ նորա . և համ_ բուրեաց զնա . և նստաւ յաթոռ իւր ում, և եդաւ աթոռ մօրն արքայի . և նստաւ ընդ աջմէ նորա : 20 *Եւ՛ ասէ ցնա՛ խնդիր մի փոքր խնդրեմ՛ ես ՚ի քէն . մի դարձուցանիցես զերեսս քո յինէն : և ասէ արքայ . խնդրեա՛ մայր իմ . զի ոչ դարձուցից զերեսս իմ ՚ի քէն : 21 *Եւ՛ ասէ . տացի աբիսակ սոմ_ նացի՛ ադոնիայ եղբօր քում կնութե՞ : 22 *Պատասխանի ետ արքայ սաղոմոն . և ասէ ցմայր իւր . և ընդէ՞ր խնդրես զաբիսակ սոմնացի ադոնիայ՛ այլ խնդ_ րեա՛ նմա զԹագաւորութի՞ս . զի նա է երէց եղբայր է քան զիս . և ն՞ր աբիա_ Թար քահանայ . և յովաբ որդի շա_ րուհեայ սպարապետ և բարեկամ : 23 *Եւ՛ երդուաւ արքայ սաղոմոն ՚ի Տ՞ր՛ և ասէ . ո՛նւո՛ն արասցէ ինձ Ա՛ծ և ո՛ն և՛ո՛ն յաւելցէ՛ եթէ ոչ հակառակ ան_ ձին իւրոյ խօսեցաւ ադոնիա զբանդ զայդ : 24 *Եւ՛ արդ՛ կենդանի է Տ՞ր . որ արար զիս . և եդ յաթոռ դաւթի հօր իմոյ . և նա արար ինձ տուն . որպէս և խօսեցաւ Տ՞ր . եթէ ոչ այսօր իսկ մեռցի ադոնիա : 25 *Եւ առաքեաց արքայ սաղոմոն ՚ի ձեռն բանեայ որդ_ ւոյ յովիդեայ . և սպան զնա : և մե_ ռաւ ադոնիա յաւուր յայնմիկ : 26 *Եւ՛ ցաբիաթար քահանայ ասէ արքայ . երթ յանաթովթ յագարակ քո . զի այր մահու ես դու յաւուր յայսմիկ . և ոչ սպանից զքեզ . զի կրեցեր զտա_ պանակ ուխտին առաջի հօր իմոյ . և զի չարչարեցար ՚ամ՛ ուրեք՛ ուր չար_ չարեցաւ հայր իմ : 27 *Եւ՛ եհան սաղո_ մոն զաբիաթար՛ չլինել քահանայ Տ՞ն . || առ ՚ի կատարելոյ բանին Տ՞ն . զոր խօսեցաւ ՚ի վերայ տանն հեղեայ ՚ի սեղով : 28 *Եւ՛ լուր եհաս մինչև առ յովաբ . զի յովաբ միտեալ էր զհետ ադոնիայ . և ոչ միտեցաւ զհետ սաղո_ մոնի . և փախեաւ յովաբ ՚ի խորանն Տ՞ն : և բուռն եհար զեղջերաց սեղա_

||1 Թագ 2.31.

29 նոյն : *Եւ ազդ եղև սաղոմոնի և ա_ սեն . Թէ փախեաւ յովաբ ՚ի խորանն Տ՞ն . և ահա ունի զեղջերաց սեղա_ նոյն : և առաքեաց սաղոմոն առ յո_ վաբ՛ և ասէ . զի՞ եղև քեզ , զի փա_ խեար ՚ի սեղանդ . և ասէ յովաբ . զի երկեայ յերեսաց քոց . և փախեայ առ Տ՞ր : և առաքեաց սաղոմոն արքայ զբա_ նեայ զորդի յովիդեայ՛ և ասէ . երթ՛ սպա՛ն զնա . և Թաղեա՛ զնա : 30 *Եւ չո_ գաւ բանեա որդի յովիդեայ առ յո_ վաբ ՚ի խորանն Տ՞ն : և ասէ ցնա . այս_ պէս ասէ արքայ . ե՛լ այտի : և ասէ յո_ վաբ՛ ոչ ելանեմ՛ . քանզի աստէն մեռա_ նիմ : և դարձաւ բանեա որդի յովի_ դեայ . և խօսեցաւ ը՞ը արքայի՛ և ասէ . զայս ինչ խօսեցաւ յովաբ . և զայս ինչ ետ պատասխանի : 31 *Եւ՛ ասէ ցնա ար_ քայ . ե՛րթ . և արա՛ նմա . ո՞ր և ասացն . և սպա՛ն զնա . և Թաղեա՛ զնա . և բարձ ցե՛ս այսօր զարիւնն զուր , զոր եհեղ յովաբ յինէն , և ՚ի տանէ հօր իմոյ : 32 *Դարձոյց Տ՞ր զարիւն անիրաւութե՞ նորա ՚ի նորին գլուխ . որպէս պատա_ հեցաւ երկուց արանց արդարոց , և քաջաց քան զնա . և սպան զնոսա սրով . և հայր իմ ոչ գիտաց զարիւն նոցա : || զաբեններ որդի ներեայ՛ զսպարա_ պետն իէլի . || և զամեսայի որդի յեթե_ րոյ զսպարապետն յուդայ : 33 *Եւ՛ դար_ ձան արիւնք ն՞ց ՚ի գլուխ նորա . և ՚ի գլուխ զաւակի նորա յաւիտեան . և դաւթի՛ և զաւակի իւրոյ՛ և տան իւր_ ոյ՛ և աթոռոյ իւրոյ՛ եղիցի խաղաղու_ Թի՞ ՚ի Տ՞է յաւիտեան : 34 *Եւ՛ ել բա_ նեա որդի յովիդեայ . և պատահեցաւ յովաբայ . և սպան զնա . և Թաղեաց զնա ՚ի տան իւրում յանապատին : 35 *Եւ՛ եդ արքայ՛ զբանեայ որդի յովի_ դեայ փոխանակ ն՞ր ՚ի զօրավարութի՞ . (և զԹագաւորութի՞ն ուղղէր յերու_ սաղէմ :) և զսադովկ քահանայ եդ արքայ փոխանակ աբիաթարու ՚ի քա_ հանայ առաջի Տ՞ն . (Եւ ետ Տ՞ր սաղո_ մոնի հանճար և իմաստութի՞ բազում յոյժ . և լայնութի՞ սրտի իբրև զաւազ առ եզր ծովու . և բազմացաւ հանճար սաղոմոնի քան զամենայն որդւոց նախ_ նեաց . և քան զիմաստնոց եգիպտաց_ ւոց : Եւ՛ էառ զդուստրն փարաւոնի . և էած զնա ՚ի քաղաքն դաւթի . մինչև ցկատարել ն՞ր զտունն իւր . և նախ զտունն Տ՞ն . և զպարիսպն Եմի շուր_ ջանակի . զեօԹն ամ արար՛ և կատա_ րեաց : Եւ էին սաղոմոնի եօթանա_ սուն հազար բեռնակրաց . և ութսուն հազար քարահատաց ՚ի լերին : Եւ ա_ րար սաղոմոն զծով՛ և զհիմս . և

||2 Թագ 3.27.

||2. Թագ 20.10.

զաւա_

զաւազանսն մեծամեծս. և զսիւնսն. և զջրաբուխսն սրահին. և զծովն պղնձի. և շինեաց զբարձաւանդակն մահարձանօք. և ամրացոյց զքաղաքսն դաւթի. և ապա դուստրն փարաւոնի ել 'ի քաղաքէն դաւթի 'ի տուն իւր. զոր շինեաց նմա. և ապա շինեաց ըզբարձաւանդակն։ Եւ սաղոմոն մատուցանէր երիցս 'ի տարւոջ ողջակէզս՝ և խաղաղականս 'ի վր՟ սեղանոյն. զոր շինեաց Տն՟ և արկանէր խունկս առաջի Տն՟. և կատարեաց զտունն։ Եւ այս են իշխանք. որք կային 'ի վերայ գործոյն սաղոմոնի. երեքհազարք և վեցհարիւր գործավարք ժողովրդեանն. որք գործէին զգործն։ Եւ շինեաց զասուր. և զմակդովն և զագեր. և զբեթորօն վերին. և զբաղաթ։ բայց յետ շինելոյն նր՟ զտունն Տն՟ և զպարիսպն եմի շուրջանակի, ապա շինեաց զքաղաքսն զայնոսիկ։ Եւ մինչդեռ կենդանի էր դաւիթ՝ պատուիրեաց սաղոմոնի. և ասէ՝ ահա ընդ քեզ է սեմէի՝ որդի գերեայ՝ որդի զաւակի յեմինայ 'ի քեբրոնէ. նա անէծ զիս յանէծս ցաւագինս՝ յաւուր յորում գնացեալ երթայի 'ի բանակս. և նա էջ ընդ առաջ իմ յորդանանու. և երդուայ նմա 'ի Տր՟. թէ ոչ մեռցի սրով։ և արդ մի՛ առնիցես զնա անպարտ. զի այր իմաստուն ես դու. և գիտասցես զինչ առնիցես նմա. և իջուսցես զալիս նր՟ արեամբ 'ի դժոխս։ )

36 * Եւ առաքեաց արքայ՝ և կոչեաց զսեմէի. և ասէ ցնա. շինեա՛ դու քեզ տուն յերուսաղէմ. և նիստ անդ. և մի՛ ուրեք ելանիցես անտի։

37 * Եւ եղիցի յաւուր ելանելոյ քոյ՝ թէ անցանիցես ընդ հեղեղատն կեդրոնի, գիտելով գիտասջիր զի մահու մեռանիցիս. և արիւն քո 'ի գլուխ քո եղիցի. և երդուաւ նմա արքայ յաւուր յայնմիկ։

38 * Եւ ասէ սեմէի ցարքայ. բարի է բանդ. զոր խօսեցար տէր իմ արքայ. այնպէս արասցէ ծառայ քո։ և նստաւ սեմէի յերուսաղէմ ամս երիս։

39 * Եւ եղև յետ երից ամաց՝ փախեան ծառայք երկու՝ սեմեայ առ անքուս՝ որդի մաաքայ արքայ գեթայ. և ազդ եղև սեմեայ. և ասեն. ահա երկու ծառայքն քո 'ի գէթ են։

40 * Յարեաւ սեմէի՝ և հանդերձեաց զէշ իւր. և գնաց առ անքուս խնդրել զծառայս իւր. և չոգաւ սեմէի և էած զծառայս իւր 'ի գեթայ։

41 * Եւ պատմեցաւ սաղոմոնի՝ ասեն, եթէ չոգաւ սեմէի յերուսաղեմէ 'ի գէթ. և դարձոյց զծառայս իւր։

42 * Եւ առաքեաց արքայ՝ և կոչեաց զսեմէի՝ և ասէ ցնա. ո՞չ երդմնեցուցի զքեզ 'ի Տր՟. և եդի քեզ վկայութիւն՝ և ասեմ. յաւուր յորում ելանիցես յերուսաղեմէ՝ և երթայցես յաջ կամ յահեակ, գիտելով գիտասջիր՝ զի մահու մեռանիցիս. և ասացեր ցիս՝ բարի է բանդ. զոր լուայ։

43 * Եւ արդ՝ զիա՞րդ է. զի ոչ պահեցեր զերդումն Տեառն. և զպատուէրն զոր պատուիրեցի քեզ։

44 * Եւ ասէ արքայ ցսեմէի. դու ինքնին գիտես զչարութիւն քո. զոր գիտէ սիրտ քո. զոր արարեր ընդ դաւթի հօր իմում. և հատոյց Տր՟ զչարիսն քո 'ի գլուխ քո։

45 * Եւ արքայ սաղոմոն օրհնեալ է. և աթոռ դաւթի պատրաստ առաջի Տն՟ յաւիտեան։

46 * Հրամանն ետ արքայ սաղոմոն բանեայ որդւոյ յովիդեայ. և ել՝ և սպան զնա. և մեռաւ։

## ԳԼ. Գ.։

1 Եւ ‖ 'ի հաստատել թագաւորութեանն սաղոմոնի, խնամութիւն արար սաղոմոն ընդ փարաւոնի արքային եգիպտացւոց. և էառ զդուստր նր՟ և էած 'ի քաղաք դաւթի՝ մինչև կատարեաց շինել զտուն իւր՝ և զտուն Տն՟. և զպարիսպն եմի շուրջանակի։ ‖2.Մնա 1. 1.

2 * Սակայն ժողովուրդն արկանէին խունկս 'ի վր՟ բարձանց. զի ո՛չ շինեցաւ տուն անուան Տն՟ մինչև ցաւուրսն ցայնոսիկ։

3 * Եւ սիրեաց սաղոմոն զՏր՟՝ գնալ ըստ հրամանաց դաւթի հօր իւրոյ. բայց 'ի բարձունսն և նա զոհէր. և արկանէր խունկս։

4 * Եւ յարեաւ՝ և գնաց արքայ 'ի գաբաւոն զոհել անդ. զի նա առաւել բարձրագոյն՝ և մեծ էր. հազար ողջակէզ եհան սաղոմոն 'ի վերայ սեղանոյն այնորիկ 'ի գաբաւոն։

5 * Եւ երևեցաւ Տր՟ սաղոմոնի 'ի քուն գիշերոյ. և ասէ Տր՟ ցսաղոմոն, խնդրեա՛ դու քեզ խնդիր ինչ։

6 * Եւ ասէ սաղոմոն՝ դու արարեր ողորմութիւն մեծ ընդ դաւթի հօր իմոյ. որպէս և շրջեցաւ առաջի քո ճշմարտութբ՟՝ և արդարութբ՟՝ և ուղղութբ՟ սրտի ընդ քեզ. և պահեցեր նմա զողորմութիւն զայս մեծ՝ տալ որդւոյ նորա նստել յաթոռ նորա՝ ոպ՟ և յաւուր յայսմիկ։

7 * Եւ արդ՝ Տր՟ Ած իմ, դու ետուր զծառայ քո փոխանակ դաւթի հօր իմոյ. և ես եմ մանուկ փոքր. և ո՛չ գիտեմ զելս և զմուտս իմ։

8 * Եւ ծառայ քո 'ի մէջ ժողովրդեան քոյ է՝ զոր ընտրեցեր. ժողովուրդ քո բազում, անթի՛ւ և անհամար 'ի բազմութենէ։

9 * ‖ Եւ տացես ծառայի քում սիրտ լսելոյ՝ և դատելոյ զժո_ ‖2.Մնա 1.10.

զժողովուրդ քո արդարութեամբ. խելամուտ լինիլ 'ի մէջ բարւոյ և չարի. քանզի ո՞ կարիցէ դատել զայս ժողովուրդ քո զծանր ։ 10 *Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի Տն. զի խնդրեաց սաղոմոն զայն բան ։ 11 *Եւ ասէ ցնա Տր. փոխանակ զի խնդրեցեր յինէն ըզբանդ զայդ. և ոչ խնդրեցեր քեզ աւուրս բազումս. և ոչ խնդրեցեր քեզ մեծութիւն. և ոչ խնդրեցեր զանձինս թշնամեաց քոց, այլ խնդրեցեր դու քեզ խելամուտ լինիլ լսելոյ զիրաւունս ։ 12 *Ահա արարի ըստ բանից քոց. ահա ետու քեզ սիրտ իմաստուն և հանճարեղ. իբրև զքեզ ոչոք եղև յառաջ քան զքեզ. և յետ քո ոչոք յարիցէ նմանօղ քեզ ։ 13 *Եւ զոր ոչն ես խնդրեցեր՝ ետու քեզ. զմեծութիւն և զփառս՝ որպէս ոչոք եղև նման քեզ 'ի թագաւորս զամենայն աւուրս քո ։ 14 *Եւ եթէ գնասցես 'ի ճանապարհս իմ, պահել զհրամանս իմ, և զպատուիրանս իմ, որպէս և գնաց դաւիթ հայր քո, և բազմացուցից զաւուրս քո ։ 15 *Եւ զարթեաւ սաղոմոն. և ահա երազ էր. և յարեաւ՝ եկն յերուսաղէմ. և եկաց առաջի սեղանոյն յանդիման տապանակի ուխտին Տն 'ի սիոն. և մատոյց ողջակէզս. և արար խաղաղականս. և արար խրախութիւն մեծ, իւր և ամ ծառայից իւրոց ։ 16 *Յայնժամ երևեցան երկու կանայք պոռնիկք արքայի. և կացին առաջի նորա ։ 17 *Եւ ասէ մի կինն՝ յիս տէր իմ. ես՝ և կինս այս էաք 'ի միում տան. և ծնայ 'ի տանն ։ 18 *Եւ եղև յաւուրն երրորդի՝ ծնաւ և կինս այս. և մեք առանձինն էաք. և ոչոք գոյր ընդ մեզ 'ի տանն՝ բաց 'ի մէնջ երկոցունց 'ի տանն ։ 19 *Եւ մեռաւ որդին սորա 'ի գիշերի. քանզի ննջեաց 'ի վր նորա ։ 20 *Եւ յարեաւ 'ի հասարակ գիշերի. և էառ զմանուկն իմ 'ի գրկաց իմոց. և աղախինն քո 'ի քուն էր. և ննջեցոյց զնա 'ի ծոց իւրում. և զորդին իւր զմեռեալ ննջեցոյց 'ի ծոց իմում ։ 21 *Եւ յարեայ ընդ առաւօտն դիեցուցանել զորդին իմ. և նա էր մեռեալ. և հայեցայ ընդ նա այգուն, և ահա չէր որդին իմ. զոր ծնայ ։ 22 *Եւ ասէ միւս կինն. ոչ. այլ որդի քո է մեռեալն. և որդի իմ կենդանին ։ և միւսն ևս ասէր ։ այլ որդի իմ կենդանին. և որդի քո մեռեալն ։ 23 *Եւ խօսեցան առաջի արքայի ։ և ասէ ցնոսա արքայ. դու ասես՝ թէ այս որդի իմ է. որ կենդանին է. և որդի դորա մեռեալն ։ և դու ասես՝ ոչ ։ այլ որդին քո մեռեալն՝ և որդի իմ կենդանին ։ 24 *Եւ ասէ արքայ. առէք ինձ սուր. և բերին զսուրն առաջի արքայի ։ 25 *Եւ ասէ արքայ. կտրեցէք զմանուկն զստնդիաց զկենդանի յերկուս. և տուք զկէսն նորա դմա. և զկէսն նր նմա ։ 26 *Եւ պատասխանի ետ կինն՝ որոյ որդին կենդանի էր. և ասէ ցարքայ. քանզի խռովեցան աղիք նր 'ի վերայ որդւոյն իւրոյ. և ասէ՝ յիս տէր. տուք նմա զմանուկն կենդանի. և մահու մի սպանանէք զնա ։ և միւսն ասէր. մի իմ լիցի՝ և մի դորա. կտրեցէք ընդ մէջ ։ 27 *Պատասխանի ետ արքայ և ասէ. տուք դմա զմանուկն կենդանի. որ ասաց՝ թէ տուք զդա նմա՝ և մահու մի սպանանէք զդա. նա է մայր դորա ։ 28 *Եւ լուաւ ամ իէլ զդատաստանն՝ զոր դատեաց արքայ. և զահի հարան յերեսաց արքայի. զի տեսին թէ իմաստութիւն Տնէ 'ի նմա առնել իրաւունս ։

Մնաց. 7.11. Մտթ. 6.29.

## ԳԼ. Դ.

1 Եւ էր արքայ սաղոմոն թագաւորեալ 'ի վր իէլի ։ 2 *Եւ այսոքիկ էին իշխանք նորա ։ ազարիա որդի սադովկայ քահանայ ։ 3 *Ելիարեբ. և ախիա որդիք սիսայ՝ դպիրք. և յովսափատ որդի աքիլիդայ 'ի վր յիշատակաց ։ 4 *Եւ բանեա որդի յովիդեայ 'ի վր զօրաց ։ և սադովկ՝ և աբիաթար քահանայք ։ 5 *Եւ ազարիա որդի նաթանայ 'ի վերայ գործակալաց ։ և զաբութ որդի նաթանայ քահանայ բարեկամ արքայի ։ 6 *Եւ աքիսար էր հրամանատար ։ ( և եղիակո հազարապետ ։ և եղիափ որդի սափայ շահապ. ) և ադօնիրամ որդի աբդովայ 'ի վր հարկաց ։ 7 *Եւ էին սաղոմոնի երկոտասան գործակալք 'ի վր ամ իէլի. տալ ռոճիկ արքայի և տան նորա մէն մի ամիս 'ի տարւոջ ։ 8 *Եւ այս են անուանք նց ։ բէնին որդի ովրայ՝ 'ի լերինն եփրեմի ։ 9 *Մի որդի դակարայ 'ի մաքմաս. և 'ի սալաբիմ. և 'ի բեթսամիւս. և յայիլոմ. մինչև ցբեթանան ։ 10 *Որդի եսդայ՝ յարաբօթն ։ նորա սոքով և ամ երկիրն ոփերայ ։ 11 *Որդւոյ ամինադաբայ և ամ նեփադովր ։ որոյ տափաթ դուստր սաղոմոնի՝ էր նորա կնութեն ։ 12 *Բանա՝ որդի այխլուդայ, զթանաք և զմաքդով, և զամ տունն սանայ. որ առ եսարթանաւ 'ի ներքոյ յեզրայէլի. և 'ի բեթսանայ մինչև ցաբելմաուլայ. և մինչև ցմամբրալայ ։ 13 *Եւ կմաալ որդի դաբերայ յռամովթ գաղաադ. նորա աւխովթ յայիրայ որդւոյ մանասէի 'ի գաղաադ.

նորա

նորա վիճակն երգաբայ որ 'ի բասան․ վաթսուն քաղաքք մեծամեծք պարսպաւորք պղնձանիգք ։ 14 *Ա.յինադաբ որդի ադդովայ 'ի մանայեմ ։ 15 *Ա.քիմաս 'ի նեփթաղիմ․ սա էառ զմասեմաթ դուստր սողոմոնի կնութե ։ 16 *Բանաաս որդի քուսեայ՝ յասեր և 'ի բաալովթ ։ 17 *Յովսափատ որդի փարուայ յիսաքար ։ 18 *Սեմէի որդի ելայ՝ 'ի բենիամին ։ 19 *Գաբեր որդի ադայի․ յերկրին գաղաադու․ յերկրին սեհոնի արքային ամորհացւոցն․ և ովգայ արքային բասանու՝ նաբիփ յերկրին ։ 20 * Յուդայ և իէլ բազում էր իբրև զաւազ առ եզեր ծովու բազմութբ․ ուտէին և ըմպէին․ և ուրախ լինէին ։

‖Սերաք․ 47.15․

21 *‖ Եւ սողոմոն իշխան էր թագաւորութեց․ 'ի գետոյ երկրին այլազգեաց մինչև 'ի սահմանս եգիպտոսի ։ բերէին պատարագս՝ և ծառայէին սողոմոնի զամ աւուրս կենաց նորա ։ 22 * Եւ այս ռոճիկք էին սողոմոնի 'ի միում աւուր ։ երեսուն քոռ նաշհոյ․ և քառասուն քոռ ալեր գերմակոյ ։ 23 * Եւ տասն եզն ընտիր․ և քսան կով արօտական․ և հարիւր ոչխար ։ թող զեղջերու՝ և զայծեամն․ և զընտիր ընտիրս հաւուց պարարելոց ։ 24 * Զի էր իշխան ամի յայնկոյս գետոյն՝ 'ի թափսայ մինչև ցգազայ․ ամ թագաւորութեց յայնմ կողմանե գետոյն ։ և էր նմա խաղաղութի յամ կողմանց շուրջանակի ։ 25 * Եւ բնակեալ էր յուդա և իէլ վստահութբ․ իւրաքանչիւրոք ընդ որթով իւրով՝ և ընդ թզենեաւ իւրով․ ուտէին և ըմպէին՝ 'ի դանայ մինչև ցբերսաբէէ զամ աւուրս սողոմոնի ։

‖2.Մնաց 9.25.

26 *‖ Եւ էին սողոմոնի քառասուն հազար մատակ ձիոց 'ի կառս ։ և երկոտասանհազար երիվարաց ։ 27 * Եւ տային այնպէս ռոճիկ գործակալքն արքային սողոմոնի ։ և զամ հրամանս սեղանոյն արքային՝ զիւրաքանչիւր ամիս ։ և ոչ սխալէին բան մի ։ 28 * Նոյնպէս և զգարին և զյարդն երիվարացն՝ և կառամատոյցն․ բերէին 'ի տեղին ուր էր արքայ՝ իւրաքանչիւրոք ըստակի իւրում ։ 29 * Եւ ետ Տր իմաստութիւն սողոմոնի՝ և հանճար բազում յոյժ․ և զեղումն սրտի իբրև զաւազ առ եզեր ծովու ։ 30 * Եւ բազմացաւ իմաստութին սողոմոնի յոյժ , քան զհանճար ամ նախնեաց մարդկան․ և քան զամ իմաստնոց եգիպտոսի ։

‖Սերաք․ 47.16.

31 *‖ Եւ իմաստնացաւ քան զամ մարդիկ ։ և իմաստնացաւ քան զգեթան զարաացի․ և զեման․ և զքաղքաղ․ և զդարդան՝ որդիս մահուլայ․ և էր անուանն յամ ազգս շուրջանակի ։ 32 *Եւ խօսեցաւ սողոմոն երիսհազար առակս․ և էին օրհնութիք նր հինգհազար ։ 33 * Եւ խօսեցաւ զփայտից ։ զեղևնափայտէն որ 'ի լիբանան․ մինչև ցսպայն որ յորմն ելանէ ։ և խօսեցաւ զանասնոց․ և զթռչնոց․ և զձկանց․ 34 * Եւ գային ամ ազգք լսել զիմաստութիւն սողոմոնի ։ և յամ թագաւորաց երկրի․ որք լսէին զիմաստութի նր ։

## ԳԼ ։ Ե ։

1 Եւ առաքեաց քիրամ արքայ տիւրոսի զծառայս իւր առ սողոմոն․ քանզի լուաւ թէ զնա օծին 'ի թագաւոր փոխանակ դաւթի հօր իւրոյ․ զի սիրեր քիրամ զդաւիթ զամ աւուրս ։ 2 ‖ * Եւ առաքեաց սողոմոն առ քիրամ, և ասէ ։ 3 *Դու ինքնին գիտես զդաւիթ զհայր իմ․ զի ոչ կարաց շինել տուն անուան Տն Այ իմոյ․ յերեսաց պատերազմացն․ որք շուրջ էին զնովաւ․ մինչև տալ Տն զնոսա ընդ ոտիւք նր ։ 4 * Եւ արդ ցածոյց Տր Ած իմ շուրջ զինև․ և ոչ գոյ մասնակար՝ և ոչ պատահար չար ։ 5 * Եւ ահա ես ասեմ շինել տուն անուան Տն Այ իմոյ․ որպէս խօսեցաւ Տր Ած ը դաւթի հօր իմում, և ասէ ․‖ որդի քո՝ զոր տաց փոխանակ քո յաթոռ քո, նա շինեսցէ տուն անուան իմոյ ։ 6 * Եւ արդ հրամայեա տուր․ և հարցեն ինձ փայտ 'ի լիբանանէ․ և ահա ծառայք իմ եղիցին ընդ ծառայս քո ։ և զվարձս ծառայութե քոյ տաց քեզ՝ ըստ ամի զոր և ասասցես ։ զի դու ինքնին գիտես․ զի ոչ գոյ մեր այր , որ գիտէ հարկանել զփայտ իբրև զսիդոնացիս 7 * Եւ եղև իբրև լուաւ քիրամ զբանս սողոմոնի , ուրախ եղև յոյժ՝ և ասէ ։ օրհնեալ է Ած այսօր․ որ ետ՝ որդի իմաստուն դաւթի 'ի վերայ բազում ժողովրդեանն այնորիկ ։ 8 * Եւ առաքեաց քիրամ առ սողոմոն՝ և ասէ․ լուայ վասն ամի․ զոր առաքեցեր առ իս ։ ես արարից զամ զկամս քո ։ եղևնափայտ՝ և մայր ։ 9 * Իջուսցեն ծառայք իմ 'ի լիբանանէ 'ի ծով․ և ես արարից զնոսա լաստս 'ի ծովու․ մինչև ցտեղի յոր առաքեսցես առ իս․ և հանից յեզր․ և դու առցես ։ և արասցես զկամս իմ տալ հաց տան իմոյ ։ 10 * Եւ տայր քիրամ սողոմոնի եղևնափայտս՝ և մայրս․ և զամ զկամս նր ։ 11 * Եւ սողոմոն տայր քիրամայ քսան հազար քոռ ցորենոյ․ և քսան հազար սափոր իւղոյ մզելոյ․ զոր տայր սողոմոն քիրամայ 'ի տարւոջ ։ 12 * ‖ Եւ Տր

‖2.Մնաց 2. 3.

‖2 Թագ 7.13.

1.Մնաց 22.10.

‖ Վեր․ 3.12.

Տ̃ն իմաստութիւն սաղոմոնի. որպէս և խօսեցաւ ընդ նմա: և էր խաղաղութիւն 'ի մէջ քիրամայ և 'ի մէջ սաղոմոնի. և ուխտեցին ուխտ 'ի մէջ իւրեանց: 13 *Եւ հարկ արքայ սաղոմոն մարդահարկ յա̃մ իէլ. և էր հարկն երեսուն հազար արանց: 14 *Եւ առաքէր զնոսա 'ի լիբանան տասն հազար յամսեան՝ փոփոխանակաւ: կային ամիս մի 'ի լիբանան. և զերկուս ամիսս 'ի տունս իւրեանց. և ադոնիրամ 'ի վ̃ր հարկին: 15 *Եւ էին սաղոմոնի եօթանասուն հազար բեռնակրաց: և ութսուն հազար քարահատաց 'ի լերինն: 16 *Թող զիշխանս կացուցելոյ սաղոմոնի 'ի վերայ գործոյն. երեքհազարք և հինգհարիւր 'ի վ̃ր ժողովրդեանն. որք գործէին զգործն: 17 *Եւ հրամայեաց արքայ. և բերին վէմս մեծամեծս. և քարինս պատուականս 'ի հիմն տանն. և քարինս անտաշս: 18 *Եւ տաշեցին որդիքն սաղոմոնի և որդիքն քիրամայ և բիբլացիքն. և պատրաստեցին զփայտն և զքար զերիս ամս շինել զտունն:

## Գլ: Զ:

‖2. Մն. 3. 1.

1 Եւ ‖ եղև յամին՝ չորեքհարիւրորդի և քառասներորդի ելանելոյ որդւոցն իէլի յեգիպտոսէ: յամին չորրորդի՝ յամսեանն երկրորդի՝ թագաւորելոյ արքայի սաղոմոնի 'ի վ̃ր իէլի. շինէր զտունն Տ̃ն: 2 *Եւ տունն. զոր շինեաց արքայ սաղոմոն Տ̃ն վաթսուն կանգուն երկայնութիւն նորա. և քսան կանգուն լայնութիւն նորա. և քսան կանգուն բարձրութիւն նորա: 3 *Եւ կամարակապ առաջի տանն՝ 'ի քսան կանգնոյ երկայնութիւն նր̃ հանդէպ բարձրութեան տանն. և 'ի տասն կանգնոյ լայնութիւն նր̃ առաջի երեսաց տանն: և շինեաց զտունն. և կատարեաց զնա: 4 *Եւ արար տանն պատուհանս հայեցիկս ծածուկս: 5 *Եւ եած զորմովք տանն պատուարս շուրջանակի՝ առ որմովք տանն շուրջանակի տաճարին՝ և դաբիրայն: և արար կողմանցս շուրջանակի: 6 *Կողմանցին ներքնոյ 'ի հինգ կանգնոյ լայնութիւն նր̃. և միջնոյն վեց կանգնոյ լայնութիւն: և երրորդին յեօթն կանգնոյ լայնութիւն նորա. քանզի անջրպետութիւն ետ տանն շուրջանակի արտաքուստ կողմանէ տանն. զի մի հարկանիցին ընդ որմս տանն: 7 *Եւ 'ի շինել տանն՝ ապառաժ և անգործ քարամբք շինեցաւ. և մուրճ, և ա̃մ ինչ երկաթի ոչ հնչեաց 'ի շինել նորա:

8 *Եւ դուռն կողմանցին 'ի ներքոյ աջոյ ուսոյ տանն. և ելանելի շրջանակաւ 'ի միջինն. և 'ի միջնոյն յերրորդ յարկն: 9 *Եւ շինեաց զտունն. և կատարեաց զնա. և դրուագեաց զտունն տախտակամածօք և յօրինուածովք եղևնափայտից: 10 *Եւ շինեաց զկողակս ա̃մ տանն. հինգ կանգնոյ բարձրութիւն նորա. և պատեաց զկողակսն եղևնափայտիւ: 11 *Եւ եղև բան Տ̃ն առ սաղոմոն՝ և ասէ: 12 *Տունդ, զոր շինես դու. եթէ ըստ հրամանաց իմոց գնասցես. և զիրաւունս իմ արասցես. և պահեսցես զա̃մ պատուիրանս իմ, գնալ ՚նոքօք. ‖հաստատեցից զբանս իմ ընդ քեզ. զոր խօսեցայ ընդ դաւթի հօր քոյ: 13 *Եւ բնակեցայց 'ի մէջ որդւոցն իէլի. և ոչ թողից զժողովուրդ իմ զիէլ: 14 *‖Եւ շինեաց սաղոմոն զտունն. և կատարեաց զնա:

‖Ս̃ 9. 5.
2. Թագ. 7. 16.
‖1. Մն. 22. 10.

15 *Եւ շինեաց զորմս տանն 'ի ներքուստ յեղևնափայտից. 'ի յատակէ տանն մինչև ցորմսն՝ և մինչև ցգերանսն. և պատեաց շուրջանակի փայտիւ 'ի ներքուստ. և դրուագեաց 'ի ներքոյ տանն կողմանցօք մայրից: 16 *Եւ շինեաց քսան կանգուն 'ի ծագէ որմոյն զմի կողմանցն 'ի յատակէ տանն մինչև ցհեծանսն: և արար 'ի ներքոյ կողմանէ նր̃ զդաբիրն 'ի սրբութեան սրբութեանցն: 17 *'Ի քառասուն կանգնոյ էր տունն՝ տաճարն ներքին: 18 *Եւ դրուագեաց զտունն 'ի ներքոյն եղևնափայտիւք: զկամարսն՝ և զկողակս. և զդրօշուածս ա̃մ յեղևնափայտից. և ոչ երևէր քարն: 19 *Հանդէպ դաբիրայն 'ի մէջ տանն 'ի ներքուստ կողմանէ: և պատրաստեաց դնել անդ զտապանակ ուխտին Տ̃ն: 20 *Եւ հանդէպ դաբիրայն քսան կանգուն յերկայնութիւն. և քսան կանգուն 'ի լայնութիւն. և քսան կանգուն բարձրութիւն նորա. և դրուագեաց զնոսա ոսկւով ձուլով: և արար զսեղան եղևնափայտեայ: 21 *Եւ դրուագեաց սաղոմոն զտունն 'ի ներքուստ ոսկւով զտով. և հաստատեաց ոսկի բևեռօք հանդէպ դաբիրայն: և պատեաց զնա ոսկւով: 22 *Եւ զամենայն տունն էած ոսկւով մինչև կատարած ա̃մ տանն: և ա̃մ ներքին կողման դաբիրայն արար թիթղունս ոսկիս: 23 *Եւ արար 'ի ներքս 'ի դաբիրն երկուս քրոբէս 'ի փայտից նոճից. 'ի տասն կանգնոյ մեծութիւն միոյն՝ կշռով: 24 *Եւ 'ի հինգ կանգնոյ թև մի նր̃. և 'ի հինգ կանգնոյ թևն երկրորդ: տասն կանգուն 'ի թևէ 'ի թև թևոց նր̃: 25 *Նոյնպէս և

երկ-

երկրորդի քրոբէին միով չափով ․ մի
բոլանդակութի քրոբէիցն ։ * Եւ 26
բարձրութիւն միոյ քրոբէի ՚ի տասն
կանգնոյ ․ նոյնպէս և երկրորդի քրո_
բէին ։ * Եւ եդ զերկոսին քրոբէսն ՚ի 27
մէջ տանն ներքնոյ ․ և տարածեաց
զթևս նոցա ․ և հասանէր թև միոյն
յորմն ։ և հասանէր թև քրոբէին երկ
րորդի՝ յորմն երկրորդ ։ և թևք նց ՚ի
մէջ տանն հասանէին ՚ի թևէ ՚ի թև ։
* Եւ պատեաց զքրոբէսն ոսկւով ։ 28
* Եւ զամենայն որմս տանն շուրջա_ 29
նակի քանդակեալ գրեաց գրչաւ քե_
րոբս և արմաւենիս ․ և դրօշուածս
հայելիս ՚ի ներքսագոյնն և յարտա_
քինն ։ * Եւ զյատակ տանն դրուա_ 30
գեաց ոսկւով զներքնոյն և զարտաք
նոյն ։ * Եւ դրաց դաբիրայինն արար 31
դուրս ՚ի փայտից գիհոյ ։ և սեամս հն_
գեքինս ։ * Եւ երկուս դուրս ՚ի փայ_ 32
տից մայրից ․ և քանդակս ՚ի նոցանէ
մածուցեալս քերոբս և արմաւենիս ․
և թիթեղունս թռուցեալս ․ և պա_
տեաց ոսկւով ․ և իջանէր ՚ի վերայ
քրոբէիցն և արմաւենեացն ոսկին ։
* Նոյնպէս արար դրաց տաճարին 33
սեամս ՚ի փայտից գիհոյ չորեքկինս ։
* Եւ երկոցունց դրանցն փայտս մայրս 34
երկբացիկս ․ մի մի դուռն ։ և ծղխնիք
նոցա երկբացիկք ։ * Եւ դուռնն երկ 35
րորդ շրջանակաւ՝ դրօշեալ ՚ինմա քե
րոբս և արմաւենիս ․ և թռուցեալ
թիթեղունս , և պատեալ ոսկւով իջե
լով ՚ի վր յօրինուածոյն ։ * Եւ շի_ 36
նեաց զսրահն ներքին երեքկանգ_
նեան յանտաշից ․ և պարիսպ գործել
յեղևնափայտից ։ * Ցամին չորրորդի 37
արկաւ հիմն տանն Տն ․ յամսեանն
զիու ։ * Եւ (յերկրորդում ամսեան) 38
յամին մետասաներորդի յամսեանն ՚ի
բուլ ․ այն է ամիսն ութերորդ ․ կա
տարեցաւ տունն ըստ ամի բանի նր ․
և ըստ ամի յօրինուածոյն իւրոյ ։ և
շինեաց զնա զեօթն ամ ։

## ԳԼ ։ Է ։

‖ Մ յր․ 9.10.

Եւ ‖ զիւր տունն շինեաց սաղոմոն 1
զերեքտասան ամ ․ և կատարեաց
զամ տունն իւր ։ * Եւ շինեաց զտունն 2
անտառին լիբանանու հարիւր կան
գուն երկայնութի ․ և յիսուն կան_
գուն լայնութի նր ։ և երեսուն կան_
գուն բարձրութի նր ․ և երից կար_
գաց սեանցն եղևնափայտից ․ և ուսք
եղևնեայք ՚ի վր սեանցն ։ * Եւ էարկ 3
զտունն ՚ի վր կողմանցաց սեանցն ․
և թիւ սեանցն քառասուն և հինգ ։ և
հնգետասան կարգ ։ * Եւ պատուհանք 4
երեք ։ և անջրպետք առ անջրպետօք
5 երեքկին ։ * Եւ ամ դրունք՝ և ամ
անջրպետք չորեքկուսիք պատուհանա_
հօրք ։ և ՚ի դրանէ ՚ի դուռն երեքկին ։
6 * Եւ զկամար սեանցն արար յիսուն
կանգուն յերկայնութի ․ և երեսուն
՚ի լայնութի ․ զօդեալ կամարքն հան
դէպ միմեանց ։ և սիւնքն և խարիսխք
7 ՚ի դիմաց կողմանէ կամարացն ։ * Եւ
զկամար աթոռոյն ․ որ դատէր ՚ի կա
մարի ատենին ։ արար և յարկ եղևնա
փայտիւք ՚ի յատակէ մինչև ցյատակ ։
8 * Եւ տան նորա յորում նստիցի սրահ
մի կամարակապ ըստ նմին գործոյ ։‖ և
տուն դստերն փարաւոնի զոր էառ
սաղոմոն , ըստ նմին կամարակապ ։

‖ Մ եր․ 3. 1.

9 * Ամենայն ՚ի քարանց պատուականաց ․
չափով յանկոփից կցեալ է միմեանս
յերկարաւոր ՚ի ներքոյ և արտաքոյ ․ ՚ի
10 հիմանէ մինչև ցառաստաղն ։ * Եւ
արտաքուստ ՚ի սրահին մեծի հաստա
տեալ քարամբք մեծամեծօք տասն
11 կանգնոց և ութ կանգնոց ։ * Եւ ՚ի
վերուստ կողմանէ քարամբք պատուա
կանօք ըստ նմին չափու անտաշիւք ․
12 և եղևնափայտիւք ։ * Օսրահն մեծ
շուրջանակի երեքկարգեան յանտա
շից ․ և կարգ մի մածուցեալ եղևնա
փայտիւք ։ և շինեաց զսրահ տանն Տն ․
զներքին կամարաց տանն Տն՝ հան_
13 դէպ տաճարին ։ * Եւ առաքեաց ար
քայ սաղոմոն ․ և էառ զքիրամ ՚ի տիւր
14 ոսէ ։ * Որդի կնոջ այրւոյ՝ և նա էր
՚ի ցեղէն նեփթաղիմայ ․ և հայր նորա
այր տիւրացի՝ ճարտարապետ պղնձոյ ․
և լի արուեստիւ՝ և իմաստութբ՝ և
գիտութբ ․ գործել զամենայն գործ
պղնձոյ ։ և եմուտ առ արքայ սաղոմոն ․
15 և արար զամ գործն ։ * Եւ ձուլեաց
զերկոսին սիւնսն կամարի տանն ․‖ ութ
և տասն կանգուն բարձրութի սեանն ․
և շուրջ զնովաւ չափ չորեքտասան
կանգուն շուրջանակի թանձրութի
սեանն ․ և ՚ի չորից մատանց մատնեքն ։

‖ Երեմ․ 52. 21.

16 նոյնպէս և երկրորդ սիւնն ։ * Եւ եր_
կուս խոյակս արար տալ ՚ի վր գլխոյ
սեանցն ձոյլ պղնձիս ․ հինգ կանգուն
բարձրութի միոյ խոյակին ․ և հինգ
կանգուն բարձրութի երկրորդ խոյա
17 կին ։ * Եւ արար երկուս վանդակս
ծածկել զխոյակն ․ և արար երկուս
ևս վանդակս ծածկել զերկրորդ խոյ
18 ակն ․ գործ կախաղանաւ ։ * Եւ եր
կոցունց սեանցն նռնաձևս պղնձիս ՚ի
վանդակապատսն ․ գործ կախաղա_
նաւ ․ կարգ առ կարգ ։ և այնպէս արար
19 երկրորդի խոյակին ։ * ՚Ի վերայ գլխոյ
սեանցն ․ գործ շուշանագործ առ կա_

մարաւ

մարաւ 'ի չորից կանգնոց: *20 Եւ սիւնս 'ի վերայ երկոցունց սեանցն. եւ 'ի վերուստ 'ի կողմանցաց խոյակին պատուար: Եւ նռնաձեւսն երկերիւր կարգ շուրջ զերկրորդիւ խոյական:

*21 Եւ կանգնեաց զսիւնս կամարի տաճարին: եւ կանգնեաց զմի սիւնն. եւ կոչեաց զանուն նր յաքում: եւ կանգնեաց զսիւնն երկրորդ. եւ կոչեաց զանուն նորա բոոզ:

*22 Եւ 'ի վր գլխոց սեանցն գործ շուշանագործ: եւ կատարեցաւ գործ սեանցն:

Բ.Մն. 4. 2.

*23 Եւ արար զծովն ձուլածոյ. տասն կանգուն 'ի շրթանէ 'ի շուրթն. գործ բոլորշի. նոյնաձեւ. հինգ կանգուն բարձրութի նորա. եւ գօտեւորք՝ երեսուն եւ երիւք կանգնովք պատէին զնա շուրջանակի:

*24 Եւ նեցուկք 'ի ներքոյ նր շուրջանակի պատէին զնա 'ի տասն կանգնոյ շուրջանակի. երկուք կարգք մութից ձուլեալք 'ի ձուլին նորա հաստեալք:

*25 Եւ երկոտասան եզն 'ի ներքոյ ծովուն. երեքն հայէին ընդ հիւսիսի. եւ երեքն հայէին ընդ ծով. եւ երեքն հայէին ընդ հարաւ. եւ երեքն հայէին ընդ արեւելս: եւ ծովն 'ի վր նոցա 'ի վերուստ կողմանէ. եւ ամենեցունց թիկունք 'ի տունն:

*26 Եւ թանձրութի նորա թզաւ: եւ շուրթն նորա իբրեւ զգործ շրթան բաժակի. եւ բոյս շուշանի 'ի վերայ նր. եւ տանէր իբրեւ երկուս հազարս մարս:

*27 Եւ արար մեքենովթս տասն՝ պղնձիս. հինգ կանգուն երկայնութի միոյ մեքենովթայ. եւ չորք կանգունք լայնութիւն նր. եւ վեց կանգունք բարձրութի նր:

*28 Եւ այս գործ էր մեքենովթացն. խորշք խորշք 'ի վր. եւ խորշք 'ի մէջ առանցիցն:

*29 Եւ 'ի վր խորշիցն նց 'ի մէջ առանցիցն առիւծք. եւ եզինք. եւ քերովբք: եւ 'ի վր առանցիցն նոյնպէս՝ եւ 'ի վերոյ եւ 'ի ներքոյ առիւծուցն եւ եզանցն՝ տեղիք գործ զառիթափի:

*30 Եւ չորք անիւք պղնձիք միում մեքենովթայն. եւ առանցք պղնձիք. եւ 'ի չորեցունց կողմանց նց ուսք նոցա 'ի ներքոյ աւազանացն՝ եւ ուսք ձուլեալք հանդոյնք մարդոյ առ ընթերակացք:

*31 Եւ բերան նր 'ի ներքուստ 'ի խոյակէն եւ 'ի վեր կանգնաւ. եւ բերան նորա գործ բոլորշի նոյնպէս: 'ի կանգնոյ եւ 'ի կիսոյ թանձրութի նր: եւ առ բերանովն նր ճախարակեայ հաստատուն՝ չորեքկուսի եւ ոչ բոլորշի:

*32 Եւ չորք անիւք 'ի ներքոյ հաստատելոցն: եւ ձեռք յանիւսն եւ 'ի մեքենովթսն. եւ բարձրութի միոյ անուոյ 'ի կանգնոյ եւ 'ի կիսոյ:

*33 Եւ գործ անուոցն՝ իբրեւ զգործած անուոց կառաց՝ եւ ձեռք նոցա՝ եւ պարանոցք իւրեանց, եւ թիկունք իւրեանց. եւ ամ արար նոցա ձուլածոյ:

*34 Եւ չորք ուսք 'ի վր չորեցունց անկեանց միոյ մեքենովթայն. անդստին 'ի մեքենովթայն ուսք իւր:

*35 Եւ 'ի գլուխ մեքենովթայն կէս կանգնոյ մեծ բոլորակ շուրջ զնովաւ 'ի վր գլխոյ մեքենովթայն: եւ սկիզբն ձեռաց նր՝ եւ խորշք նր անդստին 'ի նմանէ:

*36 Եւ բանային 'ի սկիզբն ձեռաց նորա. եւ խորշք նր քերովբք եւ առիւծունք. եւ արմաւենիք կանգնեալք առ նովաւ: իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւրոց. 'ի ներքս եւ շուրջանակի:

*37 Ըստ նմին օրինակի արար զամ զտասնեսին մեքենովթսն՝ մի պայման՝ եւ մի չափ՝ եւ մի օրինակ ամենեցուն:

*38 Եւ արար տասն աւազանս պղնձիս: եւ ունէր աւազանն մի քառասուն սափոր: 'ի չորից կանգնոյ աւազանն մի չափով: եւ աւազանն մի 'ի վերայ միոյ մեքենովթայ՝ տասնեցունց մեքենովթացն:

*39 Եւ եդ զմեքենովթսն հինգն յուսոյ տանն յաջմէ: եւ զհինգն յուսոյ տանն 'ի ձախմէ: եւ ծովն յուսոյ տանն ընդ աջմէ ը արեւելս 'ի հարաւոյ կողմանէ:

*40 Եւ արար քիրամ զսանն՝ եւ զջեռուցիչսն եւ տաշտսն: եւ կատարեաց քիրամ առնել զամ գործն. զոր արար արքայի սողոմոնի 'ի տանն Տն:

*41 Սիւնս երկուս. եւ շրջանակս քանդակագործից սեանցն 'ի վերայ գլխոց սեանց. երկուս երկուս վանդակապատս ծածկել զերկոսին շրջանակս քանդակագործացն. որք էին 'ի վերայ սեանցն:

*42 Զնռնաձեւսն զչորեքհարիւր երկոցունց վանդակացն: երկու կարգք նռնաձեւաց միոյ վանդակի ծածկել շուրջ զերկոսին շրջանակս մեքենովթացն 'ի վր երկոցունց սեանցն:

*43 Եւ զմեքենովթսն՝ եւ զաւազանսն տասնեսին 'ի վր մեքենովթացն:

*44 Եւ զծովն զմի. եւ զերկոտասանեսին եզինսն 'ի ներքոյ ծովուն:

*45 Եւ զսանսն. եւ զջեռուցիչսն զերեսին. եւ զտաշտսն. եւ զամ կահն. զոր արար քիրամ արքայի սողոմոնի 'ի տանն Տն: (եւ սիւնք քառասուն եւ ութ տանն արքայի՝ եւ տանն Տն: զամ գործ զարքայի պատրաստեաց քիրամ պղնձի համօրէն. եւ ոչ գոյր կշիռ պղնձոյն որով արար զամ գործսն զայնոսիկ 'ի բազմութէ անտի յոյժ: եւ ոչ գոյր չափ կշռոյ պղնձոյն փայլնոյ:)

*46 Յաւուրն յորդանանու ձուլեաց զայն արքայ. 'ի թանձրութի երկրին 'ի մէջ սոկքովթայ. եւ 'ի մէջ սիրաթայմ:

*Եւ

47 *Եւ ետ արքայ սաղոմոն յամ կահն, քանզի կարի յոյժ էր բազմութի. և ոչ գոյր թիւ պղնձոյն ։ 48 *Եւ արար սաղոմոն զամ կահն. որ 'ի տանն Տն ։ զզոհանոյն ոսկի. և զսեղանն յորոյ վերայ հացն պատարագի՝ ոսկի ։ 49 *Եւ զաշտանակսն հինգ ընդ աջմէ և հինգ ընդ ձախմէ հանդէպ դաբիրայն 'ի զուտ ոսկւոյ ։ և զբազմակակալսն. և զճրագունսն ։ և զյարդարիչսն ոսկիս ։ 50 *Եւ զդրանդսն. և զբևեռսն. և ըզ տաշտսն. և զսկաւառակսն. և ըզ տուփսն ոսկիս զուտս ։ և զդրունս տանն ներքնոյ զսրբութե սրբութեցն ։ և զդրունս տան տաճարին ոսկիս ։ 51 *Եւ բովանդակեցաւ ամ գործն. զոր արար արքայ սաղոմոն զտանն Տն ։ և տարաւ արքայ սաղոմոն զսրբութիւնս դաւթի հօր իւրոյ. և զամ սրբութիւնս սաղոմոնի զարծաթ՝ և զոսկի՝ և ըզ կահ՝ եդ 'ի գանձս տանն Տն ։

պղնձ

2.Մնաց. 5. 1.

## Գլ ։ Ը ։

1 Յայնժամ եկեղեցացոյց արքայ սաղոմոն զամ ծերս իէլի, հանդերձ ամ դաւազանացն համբարձելոց հարց որդւոցն իէլի առ արքայ սաղոմոն 'ի սիոն. հանել զտապանակ ուխտին Տն 'ի քաղաքէ դաւթի՝ այս է 'ի սիոնէ ։ 2 *Եւ եկեղեցացան առ արքայ սաղոմոն ամ այր իէլի. յամսեանն անթանիմ՝ ամի տօնին. այն է ամիսն եօթներորդ ։ 3 *Եւ եկին ամ ծերք իէլի. և բարձին քահանայքն զտապանակն ։ 4 *Եւ հանին զտապանակն Տն ։ և զխորանն վկայութե. և զամ զսպասն սրբութե. որ 'ի խորանին վկայութե ։ և հանին զայն քահանայքն և ղևտացիք ։ 5 *Եւ արքայ սաղոմոն՝ և ամ ժողովուրդն իէլի գումարեալք առ նա՝ հանդերձ նովաւ առաջի տապանակին. զենուին արջառս և ոչխարս անհամարս և անթիւս 'ի բազմութէ ։ 6 *Եւ տարան 'ի ներքս քահանայքն զտապանակ ուխտին Տն 'ի տեղի իւր՝ 'ի դաբիր տանն սրբութե սրբութեցն՝ ընդ թևովք քրովբէիցն ։ 7 *Զի քրովբէքն թռուցեալ թևովք 'ի վր տեղւոյ տապանակին. և ծածկէին քրովբէքն զտապանակն. և զսրբութիւս նր 'ի վերուստ ։ 8 *Եւ կային 'ի վր սրբեցելոյն. և հայէին գլուխք սրբեցելոյն 'ի սրբութեց անտի հանդէպ դաբիրայն. և արտաքս ոչ երևէին. և եղեն անդ մինչև ցայսօր ։ 9 *Եւ ոչ ինչ գոյր 'ի տապանակին. բայց երկու տախտակքն քարեղէնք տախտակ ուխտի. զորս եդ անդ մովսէս 'ի քորէբ. զորս ուխտեաց Տր ընդ որդիսն իէլի յելանելն նց յերկրէն եգիպտացւոց ։

2.Մնաց. 5. 2.

յաւուր տօնի

Ելից. 34. 27.

2.Օրէն. 10. 5.

2.Մնաց. 5.10.

10 *Եւ եղև իբրև ելին քահանայքն 'ի սրբութենէն՝ և ամպն ելից զտունն Տն ։ 11 *Եւ ոչ կարէին քահանայքն կալ 'ի սպասու յերեսաց ամպոյն. զի փառք Տն լցին զտունն ։ 12 *Յայնժամ ասէ սաղոմոն. Տր ասաց հովանի լինել միգով ։ 13 *Շինելով շինեցի քեզ տուն բնակութե. հաստատութի աթոռոյ քում յաւիտեան ։ 14 *Եւ դարձոյց արքայ զերեսս իւր. և օրհնեաց զամ իէլ ։ և ամ եկեղեցին իէլի կայր ։ 15 *Եւ ասէ ։ օրհնեալ Տր Ած իէլի այսօր. որ խօսեցաւ բերանով իւրով վն դաւթի հօր իմոյ. և ձեռօք իւրովք ելից՝ և ասէ ։ 16 *Յօրէ յորմէ հանի զժողովուրդ իմ զիէլ յեգիպտոսէ. ոչ ընտրեցի 'ի քաղաքի միում ուրեք դաւազանաց իէլի շինել տուն՝ զի լինիցի անուան իմոյ. և ընտրեցի զդաւիթ լինել 'ի վերայ ժողովրդեան իմոյ իէլի ։ 17 *Եւ եղև 'ի սրտի դաւթի հօր իմոյ շինել տուն անուան Տն Այ իէլի ։ 18 *Եւ ասէ Տր ցդաւիթ ցհայր իմ. փոխանակ զի եկն 'ի սիրտ քո շինել տուն անուան իմոյ՝ բարւոք արարեր, զի եղև 'ի սրտի քում ։ 19 *Բայց դու ոչ շինեսցես զտունն՝ այլ որդի քո՝ որ ելանիցէ յերանաց քոց, նա շինեսցէ տուն անուան իմոյ ։ 20 *Եւ կանգնեաց Տր զբան իւր. զոր խօսեցաւ ։ և կացի ես փոխանակ դաւթի հօր իմոյ. և նստայ յաթոռն իէլի՝ որպէս և խօսեցաւ Տր ։ և շինեցի տուն անուան Տն Այ իէլի ։ 21 *Եւ եդի անդ տեղի տապանակին. ուր է ուխտն Տն. զոր ուխտեաց Տր ընդ հարսն մեր 'ի հանել նորա զնոսա յերկրէն եգիպտացւոց ։ 22 *Եւ յարեաւ սաղոմոն յերեսաց սեղանոյն Տն առաջի ամ եկեղեցւոյն իէլի. և տարածեաց զձեռս իւր յերկինս ։ 23 *Եւ ասէ ։ Տր Ած իէլի. չիք իբրև զքեզ Ած, յերկինս 'ի վեր՝ և յերկիր 'ի խոնարհ ։ որ պահեցեր զուխտ և զողորմութի ծառայի քում գնացելոյ առաջի քո ամենայն սրտիւ իւրով ։ 24 *Պահել ծառայի քում դաւթի հօր իմոյ. զոր խօստացար նմա. և խօսեցար բերանով քով. և ձեռօք քովք կատարեցեր. որպէս և յաւուր յայսմիկ ։ 25 *Եւ արդ Տր Ած իէլի. պահեա ծառայի քում դաւթի հօր իմոյ. զոր խօսեցար նմա, և ասացեր. ոչ բարձցի քո այր յերեսաց իմոց, որ նստիցի յաթոռ իէլի՝ միայն թէ զգուշասցին որդիք քո ճանապարհաց իւրեանց գնալ առաջի իմ. որպէս և դու գնա_

Եբրայ. 9. 4

Ելից. 40.32.

2.Մնաց. 6. 1.

2 Թագ. 7. 2.

2 Թագ. 7.12. և 16.

գնացեր առաջի իմ: 26 *Եւ արդ Տէր Ա՟Ծ Ի՟Ղի · հաւատարիմ լիցի բանն քո՝ զոր խօսեցար ծառայի քում Դաւթի հօր իմոյ: 27 *Թէ բնակիցի Ա՟Ծ ընդ մարդկան՝ որ ՚ի վ՟ր երկրի: եթէ երկինք՝ և երկնից երկինք չեն քեզ բաւականք, արդ՝ զիա՞րդ տունս՝ զոր շինեցի: 28 *Եւ արդ հայեսցիս յաղօթս ծառայի քում, և ՚ի խնդրուածս իմ, Տ՟Ր Ա՟Ծ Ի՟Ղի · լսել պաղատանաց աղօթից ծառայի քոյ · որ կայ առաջի քո առ քեզ: 29 *Լինել բաց աչաց քոց զցայգ և զցերեկ ՚ի տեղւոջս՝ զորմէ ասացեր՝ թէ ‖ եղիցի անուն իմ անդ՝ ՚ի լսել աղօթից, զոր աղաչէ ծառայ քո ՚ի տեղւոջս յայսմիկ, ՚ի տուէ և ՚ի գիշերի · և լուիցես ձայնի ծառայի քոյ՝ և ժողովրդեանն քոյ Ի՟Ղի · որք կայցեն յաղօթս ՚ի տեղւոջս յայսմիկ: 30 *Եւ դու լուիցես ՚ի տեղւոջ բնակութե՟ քոյ յերկնից՝ և արասցես · և քաւեսցես: 31 *Զորինչ ոք մեղիցէ ընկերի իւրում՝ և եթէ առցէ ՚ի վ՟ր նորա անէծս անիծանել զնա, և խոստովան լիցի առաջի սեղանոյ քոյ ՚ի տանս յայսմիկ: 32 *Եւ դու լուիցես յերկնից · և արասցես՝ և դատեսցես զժողովուրդ քո զԻ՟Ղ: յանօրինել անօրինին տալ ըստ ճանապարհացն նորա ՚ի գլուխ նո՟ր: և արդարացուցանել զարդարն · տալ նմա ըստ արդարութե՟ն նո՟ր: 33 *Եւ ՚ի պարտիլ ժողովրդեան քոյ Ի՟Ղի առաջի թշնամեաց, յորժամ մեղանչիցեն քեզ: և դառնայցեն առ քեզ՝ և խոստովան լիցին անուան քում. և յաղօթս կայցեն · և աղաչիցեն առ քեզ ՚ի տանս յայսմիկ: 34 *Եւ դու լուիցես յերկնից · և քաւեսցես զմեղս ժողովրդեան քոյ Ի՟Ղի · և դարձուսցես զնոսա յերկիրս · զոր ետուր հարց նոցա: 35 *Եւ յարգելուլ երկնից և ՚ի չլինել անձրևի՝ զի մեղուցեալ իցեն քեզ · և յաղօթս կայցեն ՚ի տեղւոջս յայսմիկ, և խոստովան լինիցին անուան քում, և ՚ի մեղացն իւրեանց դառնայցեն, յորժամ նկուն առնիցես զնո՟ս: 36 *Լուիցես յերկնից. և քաւեսցես զմեղս ծառայից քոց և ժողովրդեան քոյ Ի՟Ղի · զի ցուցցես նո՟ց ճանապարհ բարի՝ գնալ ՚ի նմա · և տացես անձրև յերկիր քո · զոր ետուր ժողովրդեան քում ՚ի ժառանգութի՟ւն: 37 *Եւ սով եթէ լինիցի յերկիր, կամ թէ մահ, կամ թէ հրայրեացք · կամ դալուկն · կամ ջորեակ · կամ ժանկ եթէ լինիցի · և նեղիցէ զնա թշնամի իւր ՚ի միում ՚ի քաղաքացն իւրոց · ամ պատահար և ամ ցաւ: 38 *Ամենայն աղօթք՝ և ամենայն խնդրուածք · որք լինիցին ամ մարդոյ · ամենայն ժողովրդեան քոյ Ի՟Ղի, որպէս զիարդ գիտիցէ իւրաքանչիւր զախտ սրտի իւրոյ և տարածեսցէ զձեռս իւր ՚ի տանս յայսմիկ: 39 *Եւ դու լուիցես յերկնից ՚ի պատրաստ բնակութենէ քումմէ · և քաւեսցես՝ և արասցես · և տացես առն ըստ ամ ճանապարհաց իւրոց · որպէս և գիտիցես զսիրտ նորա · զի դու միայն գիտես զսիրտ ամ որդւոց մարդկան: 40 *Զի երկիցեն ՚ի քէն զամենայն աւուրս իւրեանց՝ որչափ և կեցցեն ՚ի վ՟ր երեսաց երկրի · զոր ետուր հարցն մերոց: 41 *Եւ օտարոտին, որ ո՛չ իցէ ՚ի ժողովրդենէ քումմէ Ի՟Ղի, և նա եկեալ իցէ յերկրէ հեռաստանէ: 42 *Որ և լուիցէ զանուանէ քումմէ մեծէ · և զձեռանէ քումմէ հզօրէ · և զբազկէ քումմէ ձգելոյ · և եկեսցէ, և յաղօթս կացցէ ՚ի տեղւոջս յայսմիկ: 43 *Եւ դու լուիցես յերկնից ՚ի պատրաստ բնակութե՟ն քումմէ · և տացես ըստ ամի զոր և կարդասցէ առ քեզ օտարոտին · զի ծանիցեն ամ ազգք երկրի զանուն քո · և երկիցեն ՚ի քէն՝ որպէս և ժողովուրդ քո Ի՟Ղ · և ծանիցեն զի անուն քո կոչեցեալ է ՚ի վ՟ր տանս · զոր շինեցի: 44 *Եւ եթէ ելանիցէ ժողովուրդ քո ՚ի պատերազմ՝ ընդ թշնամիս իւր՝ ՚ի ճանապարհի՝ յորմէ դարձուսցէ զնո՟ս · և կացցեն յաղօթս յանուն Տ՟ն ՚ի ճանապարհի քաղաքիս՝ զոր ընտրեցեր · և ՚ի տանս՝ զոր շինեցի անուան քում: 45 *Եւ լուիցես յերկնից աղօթից նո՟ց և խնդրուածոց նոցա · և արասցես նո՟ց իրաւունս: 46 *Քանզի մեղանչիցեն քեզ · ‖ զի չիք մարդ · որ ոչ մեղանչէ · և եթէ ածցես ՚ի վերայ նոցա · և մատնեսցես զնո՟ս առաջի թշնամեաց · և գերեսցեն զնո՟ս գերիչք իւրեանց յերկիր թշնամեաց՝ ՚ի հեռաւոր կամ ՚ի մօտաւոր: 47 *Եւ դարձուսցեն զսիրտս իւրեանց յերկրին յոր գերեցան · և դառնայցեն · և աղաչեսցեն զքեզ յերկրին գերութե՟ն իւրեանց · և ասիցեն՝ մեղաք · անօրինեցաք · անիրաւեցաք: 48 *Եւ դարձցին առ քեզ յամ սրտէ իւրեանց · և յամ անձնէ իւրեանց՝ յերկրին թշնամեաց իւրեանց · յոր փոխեցեր զնո՟ս · և յաղօթս կացցեն առ քեզ ընդ ճանապարհի երկրին իւրեանց, զոր ետուր հարցն նոցա · և քաղաքիս · զոր ընտրեցեր · և տանս, զոր շինեցի անուան քում: 49 *Եւ լուիցես յերկնից ՚ի պատրաստ բնակութե՟ն քումմէ աղօթից նոցա՝ և խնդրուածոց նոցա · և արասցես նո՟ց իրաւունս: 50 *Եւ քաւեսցես զանիրաւ

ութիւ

‖2.Օրէ. 12.11.

յարգելունել

ութիւն նոցա․ զոր մեղան քեզ․ և ըստ
ամենայն արհամարհանաց նց զոր ար
համարհեցին զքեզ․ և տացես զնոսա
'ի գթութիւն առաջի գերչաց իւրեանց․
և գթասցին 'ի նս ։ * Զի ժողովուրդ 51
քո՛ և ժառանգութիւն քո են՝ զորս հա
ներ յերկրէն եգիպտացւոց 'ի միջոյ եր
կաթոյն հալոցաց ։ * Եւ եղիցին աչք 52
քո՝ և ականջք քո բաց 'ի խնդրուածս
ծառայի քոյ․ և 'ի խնդրուածս ժողո_
վրդեան քոյ Իղի՝ լսել նոցա յամի ,
որովք և կարդասցեն առ քեզ ։ * Զի 53
դու զատուցեր զնոսա քեզ 'ի ժառան
գութիւն յամենայն ժողովրդոց երկրի․
որպ խօսեցար 'ի ձեռն մովսէսի ծառայի
քոյ 'ի հանել զհարսն մեր յեգիպտո_
սէ Տր Տր ։ (յայնժամ խօսեցաւ սա
ղոմոն վասն տանն իբրև կատարեաց
շինել զնա․ զարեգակն ծանեաւ յեր
կինս՝ Տր ասաց բնակել 'ի մէգի․ շի_
նեա զտուն իմ տուն վայելուչ բնա_
կել 'ի նմա նորոգութբ․ ոչ աւանիկ
գրեալ է այս 'ի գիրս երգոց ։ ) * Եւ 54
եղև իբրև կատարեաց սաղոմոն կալ
յաղօթս առ Տր՝ զամ աղօթս զայս՝
և զխնդրուածս․ յարեաւ յերեսաց սե
ղանոյն Տն․ ուր կայր 'ի ծունր 'ի վր
ծնկաց իւրոց․ և ձեռք իւր ընդ եր_
կինս տարածեալ ։ * Եւ եկաց․ և օրհ 55
նեաց զամ եկեղեցին Իղի մեծաձայն․
և ասէ ։ * Օրհնեալ է Տր այսօր՝ որ 56
ետ հանգիստ ժողովրդեան իւրում
Իղի, ըստ ամի զորև խօսեցաւ․ ոչ վրի
պեաց բան մի յամենայն բանից նորա
բարեաց․ որովք խօսեցաւ 'ի ձեռն մո
վսէսի ծառայի իւրոյ ։ * Եւ եղիցի Տր 57
Այ մեր ընդ մեզ՝ որպ էր ընդ հարսն
մեր․ և մի թողցէ զմեզ ։ * Այլ դար 58
ձուսցէ զմեզ առ 'ի չխոտորելոյ սրտից
մերոց 'ի նմանէ ․ գնալ յամ ճանա_
պարհս նորա․ և պահել զամ պատուէ
րանս նորա․ և զհրամանս նր․ և զի_
րաւունս նորա ․ զորս պատուիրեաց
հարցն մերոց ։ * Եղիցին բանքս իմ այ 59
սոքիկ որովք պաղատեցայ առաջի Տն
Այ մերոյ՝ մերձենալ առ Տր Այ մեր՝
'ի տուէ և 'ի գիշերի․ առնել իրաւ_
ունս ծառայի քում․ և իրաւունս ժո
ղովրդեան քում Իղի , զբան օրըստօ_
րէ ։ * Զի ծանիցեն ամ ժողովուրդք 60
երկրի՝ զի Տր նա է Այ․ և չիք այլ ոք ։
* Եւ եղիցին սիրտք մեր կատարեալք 61
առ Տր Այ մեր՝ անարատութբ գնալ
ըստ հրամանաց նր․ և պահել զպատ_
ուիրանս նորա որպէս և յաւուր յայս
միկ ։ * Եւ արքայ՝ և ամ որդիքն Իղի 62
ընդ նմա զոհեցին զոհս առաջի Տն ։
‖2․Մն 7․5․ * ‖ Եւ զոհեաց արքայ սաղոմոն զոհս 63
խ

խաղաղականաց, զորս զոհեաց Տն, յար
ջառոց քսան և երկուս հազարս․ և
յոչխարաց հարիւր և քսան հազար․ և
արար նաւակատիս տանն Տն արքայ՝
64 և ամ որդիքն իսրայէլի ։ * Յաւուր
յայնմիկ սրբեաց արքայ զմիջոց սրա_
հին․ որ հանդէպ տանն Տն․ զի անդ
արար զողջակէզսն․ և զպատարագսն․
և զզոհսն՝ և զճարպսն խաղաղակա_
նաց․ զի սեղանն պղնձի , որ առաջի
Տն կայր՝ փոքր էր․ և ոչ կարէր ընդ_
ունել զողջակէզսն՝ և զպատարագս՝
65 և զզոհս խաղաղականաց ։ * Եւ արար
սաղոմոն յաւուր յայնմիկ տօն , և ամ
Իէլ ընդ նմա եկեղեցի մեծ, 'ի մուտից
եմաթայ մինչև ցգետն եգիպտացւոց՝
առաջի Տն Այ մերոյ՝ 'ի տանն զոր
շինեաց, ուտելով՝ և ըմպելով՝ և ու_
րախ լինելով առաջի Տն Այ մերոյ
զեօթն օր՝ և զեօթն օր․ աւուրս չորեք
66 տասան ։ * Եւ յաւուրն ութերորդի
արձակեաց զժողովուրդն․ և օրհնե_
ցին զարքայ՝ և գնացին իւրաքանչիւր
'ի բնակութիւս իւրեանց խնդութբ՝
և սրտի զուարթութբ՝ 'ի վր ամ բա
րեացն զոր արար Տր ծառայի իւրում
դաւթի՝ և Իղի ժողովրդեան իւրում ։

## Գլ ։ Թ․ ։

1 Եւ ‖ եղև իբրև կատարեաց սաղո ‖2․Մն
մոն շինել զտունն Տն․ և զտունն 7․11․
արքայի ․ և զամենայն հանդերձանս
սաղոմոնի․ զոր կամեցաւ առնել ։
2 * ‖ Եւ երևեցաւ Տր սաղոմոնի երկ_ ‖ Վեր․
րորդ անգամ․ որպ երևեցաւ նմա 'ի 3․5․
3 գաբաւոն ։ * Եւ ասէ ցնա Տր․ լուայ 2․Մնա․
ձայնի աղօթից քոց և պաղատանաց ․ 7․12․
զոր պաղատեցար առաջի իմ․ արարի
քեզ ըստ ամ աղօթից քոց ․ սրբեցի
զտունդ, զոր շինեցեր ‖ դնել զանուն ‖Վերն․
իմ անդ յաւիտեան ․ և եղիցին աչք 8․29․
իմ և սիրտ իմ անդ զամ աւուրս ։
4 * Եւ դու եթէ գնասցես առաջի իմ,
որպէս գնաց դաւիթ հայր քո սրբու
թբ սրտի և ուղղութբ՝ առնել ըստ
ամի զոր պատուիրեցի նմա․ և զհրա_
մանս իմ, և զպատուիրանս իմ պահես
5 ցես ։ * ‖ Կանգնեցից զաթոռ թա_ ‖2 Թագ․
գաւորութեն քոյ 'ի վերայ Իղի յաւի_ 7․12․ և
տեան․ որպէս խօսեցայ դաւթի հօր 16․
քում, և ասացի․ մի պակասեսցի քո 1․Մնա․
6 այր առաջնորդ յԻղէ ։ * Իսկ թէ 22․10․
դառնալով դառնայցէք դուք և որ_
դիք ձեր յինէն․ և ոչ պահիցէք դուք
զպատուիրանս իմ և զհրամանս իմ․
զոր ետ մովսէս առաջի ձեր ։ և երթայ
ցէք․ և ծառայիցէք աստուծոց օտա_
րաց․ և երկիր պագանիցէք նոցա ։

7 * Բարձից զԻէլ յերկրէն՝ զոր ետու նոցա. եւ զտունդ զայդ՝ զոր սրբեցի անուան իմոյ՝ ընկեցից յերեսաց իմոց. եւ եղիցի Իէլ յապականութիւն եւ 'ի խօսս ընդ ամ ժողովուրդս: 8 * Եւ տունդ բարձրացեալ 'ի զրոյցս. ամենայն, որ անցանիցէ առ դովաւ՝ զարմասցի. եւ շչեսցէ. եւ ասասցէ. ընդէ՞ր արար Տր այսպէս երկրիս այսմիկ՝ եւ տանս այսմիկ: 9 * Եւ ասասցեն, փոխանակ զի թողին զՏր Ած իւրեանց. որ եհան զհարս նց յեգիպտոսէ 'ի տանէ ծառայութե. եւ բուռն հարին զաստուծոց օտարաց. եւ երկիր պագին նոցա. եւ ծառայեցին նց. վն այնորիկ եած Տր 'ի վերայ դոցա զամ չարիսդ զայդոսիկ. (յայնժամ եհան սաղոմոն զդուստրն փարաւոնի 'ի քաղաքէ դաւթի 'ի տունն իւր. զոր շինեաց իւր:)

Բ. Օրէ. 29.24. Երեմ. 22.8.

10 * Եւ եղեւ յաւուրսն յայնոսիկ, յամս քսան՝ զոր շինեաց սաղոմոն զերկոսին տունսն. զտունն Տն. եւ զտունն արքայի: 11 * Եւ քիրամ արքայ տիւրոսի ձեռնտու էր սաղոմոնի. եղեւնափայտիւք՝ եւ փայտիւք մայրից. եւ ոսկւով. եւ ամ կամօք իւրօք: յայնժամ ետ արքայ սաղոմոն քիրամայ քսան քաղաք 'ի գալիլեայ: 12 * Եւ ել քիրամ 'ի տիւրոսէ՝ եւ չոգաւ 'ի գալիլեայ տեսանել զքաղաքսն. զոր ետ նմա սաղոմոն. եւ ոչ եղեւ նմա հաճոյ: 13 * Եւ ասէ՝ զինչ են քաղաքքս այսոքիկ. զորս ետուր ինձ եղբայր. եւ կոչեաց զնոսա սահմանս՝ մինչեւ ցայսօր: 14 * Եւ եբեր քիրամ սաղոմոնի հարիւր եւ քսան տաղանդ ոսկւոյ: 15 * Եւ այս են հանդերձանք աւարին. զոր եհան արքայ սաղոմոն շինել զտունն Տն. եւ զտունն արքայի. եւ զմելոն. եւ զբարձաւանդակն. խնուլ զխրամն քաղաքի դաւթի. եւ զասուր. եւ զմագեդդան. եւ զպարիսպն Եմի. եւ զեսեր. եւ զմակեդդով. եւ զգազեր: 16 * Փարաւոնի արքայի եգիպտացւոց. քանզի ել՝ եւ էառ զգազեր. եւ այրեաց զնա հրով. եւ զքանանացին, որ նստէր 'ի քաղաքին՝ սպան. եւ ետ զնա պաշտատական դստեր իւր ում կնոջ սաղոմոնի: 17 * Եւ շինեաց սաղոմոն զգազեր. եւ զբեթորոն զներքին: 18 * Եւ զբաղաթ. եւ զթերմոթ յանապատի եւ յերկրի անդ: 19 * Զամենայն քաղաքս բնակութեց. որք էին սաղոմոնի. եւ զքաղաքս կառաց՝ եւ զամ քաղաքս երիվարաց. եւ զհանդերձանսն սաղոմոնի. զոր հանդերձեաց շինել յերուսաղէմ. եւ 'ի լիբանան. եւ յամ երկրին: 20 * Ա̃ չիշխելոյ նորա ամ ազգին մնացելոյ յամորհացւոցն. եւ 'ի քետացւոց. եւ 'ի փերեզացւոց. եւ 'ի խեւացւոց. եւ 'ի քանանացւոց. եւ 'ի յեբուսացւոց. եւ 'ի գերգեսացւոց. որք ոչ յորդւոյն Իէլի էին: 21 * Որդիք նց մնացեալք յետ նոցա յերկրին. զորս ոչ կարացին որդիքն Իէլի սատակել. եւ հարկ զնոսա սաղոմոն ընդ հարկօք ծառայութե մինչեւ ցայսօր: 22 * Եւ յորդւոյն Իէլի ոչ ետ սաղոմոն 'ի հանդերձաւորութի. զի նոքա արք պատերազմօղք էին. եւ ծառայք նր եւ իշխանք նր սպառազէնք նր: 23 * Եւ այս են իշխանք որք կային 'ի վր գործոյն սաղոմոնի հինգ հարիւր եւ յիսուն որք ունէին զժողովուրդն. որք գործէին 'ի գործն: 24 * Բայց դուստրն փարաւոնի ել 'ի քաղաքէն դաւթի 'ի տունն իւր. զոր շինեաց նմա. յայնժամ շինեաց զմելոն: 25 * Եւ հանէր սաղոմոն երիցս անգամ 'ի տարւոջ ողջակէզս եւ խաղաղականս 'ի վերայ սեղանոյն. զոր շինեաց Տն. եւ արկանէր խունկս առաջի Տն. եւ բովանդակեաց զտունն: 26 * Եւ արար նաւ արքայ սաղոմոն 'ի գասիոնգաբեր. որ է մերձ յեղաթ՝ յեզեր վերջնոյ ծովուն յերկրին եդոմայ: 27 * Եւ առաքեաց քիրամ ընդ նաւսն 'ի ծառայից իւրոց՝ նաւորդս հմուտս նաւարկութե ծովու՝ ընդ ծառայս սաղոմոնի: 28 * Եւ չոգան 'ի սոփերա. եւ առին անտի ոսկի չորեքհարիւր եւ քսան տաղանդ. եւ բերին արքայի սաղոմոնի:

Բ. Մնա. 8.1. Բ. Մնա. 8.11. Բ. Մնա. 9.10.

## ԳԼ: Ժ:

1 Եւ տիկինն սաբայ լուաւ զանունն սաղոմոնի եւ զանունն Տն. եւ զիմաստութիւն սաղոմոնի. եւ եկն փորձել զնա առակօք: 2 * Եւ եկն յերուսաղէմ զօրու ծանու յոյժ՝ եւ ուղտուք՝ որք բարձեալ բերէին խունկս՝ եւ ոսկի՝ բազում յոյժ. եւ ականս պատուականս. եւ եմուտ առ սաղոմոն. եւ խօսեցաւ ընդ նմա զամ ինչ, որ էր 'ի սրտի իւրում: 3 * Եւ մեկնեաց նմա սաղոմոն զամ բանս նր. եւ ոչ էր բան սխալեալ յարքայէ, զոր ոչ մեկնեաց նմա: 4 * Եւ ետես կինն զամ իմաստութին սաղոմոնի՝ եւ զտունն՝ զոր շինեաց: 5 * Եւ զխորտիկսն սաղոմոնի. եւ զաթոռ ծառայից նր. եւ զկարգ պաշտօնէից նորա. եւ զհանդերձանս նորա՝ եւ զմատռուակս նորա. եւ զողջակէզս նր. զոր մատուցանէր Տն, եւ յիմարեցաւ: 6 * Եւ ասէ ցարքայ սաղոմոն. Ճշմարիտ էր բանն, զոր լուայ յերկրին իմում վասն բանից քոց՝ եւ վասն իմաստութե քո: 7 * Եւ ոչ հաւատայի խօսելեացն առ իս.

Բ. Մնա. 9.1. Մատ. 12.42. Ղուկ. 11.31.

առիս . մինչև ինձէն եկի՛ և տեսին աչք իմ. և ահա 'ի կէս չէ՛ զոր պատմեցին ինձ իմաստութեդ՛ զոր յաւելեր. և բարութե և ամ համբաւոցն՛ զոր լուեի յերկրին իմում ։ 8 * Երանելի են կանայք քո՛ և երանելիք ծառայք քո՛ որք կան առաջի քո՛ և հանապազ լսեն զիմաստութի քո ։ 9 * Եղիցի Տր Ած քո օրհնեալ՛ որ հաճեցաւ ընդ քեզ տալ զքեզ յաթոռ Իղի վասն սիրելոյ Տն զԻղ հաստատել յաւիտեան. և կացոյց զքեզ արքայ 'ի վերայ նոցա . առնել իրաւունս և արդարութի ։ 10 * Եւ ետ սաղոմոնի հարիւր և քսան տաղանդ ոսկւոյ . և խունկս բազումս յոյժ . և ականս պատուականս . և ոչ էին եկեալ այնպիսի խունկք բազումք՛ և անուշունք . զորս ետ տիկինն սաբայ արքային սաղոմոնի ։ 11 * ‖ Եւ նաւն քիրամայ՛ որ բերէր ոսկի 'ի սոփերայ , եբեր 'ի սոփերայ փայտ անտաշ բազում յոյժ . և ականս պատուականս ։ 12 * Եւ արար արքայ զփայտսն անտաշս մոյթս տանն Տն . և տանն արքային . և քնարս՛ և տաւիղս՛ երգեցողաց . և չէր եկեալ այնպիսի փայտ անտաշ յերկիրն. և ոչ երևեցաւ ուրեք մինչև ցայսօր ։ 13 * Եւ արքայ սաղոմոն ետ տիկնոջն սաբայ զամ ինչ՛ զոր կամեցաւ . և զոր խնդրեաց . բաց յայնմանէ զորս տուեալ էր նորա 'ի ձեռս արքային սաղոմոնի. և դարձաւ՛ և գնաց յերկիր իւր՛ ինքն և ամ ծառայք իւր ։ 14 * Եւ էր կշիռ ոսկւոյն եկելոյ սաղոմոնի 'ի միում տարւոջ վեցհարիւր վաթսուն և վեց տաղանդ ոսկւոյ ։ 15 * Թող զհարկացն կարգելոց . և զվաճառաց վաճառականաց . և զամ թագաւորաց այնր կողմանն . և նախարարաց երկրին ։ 16 * Եւ արար արքայ սաղոմոն երեքհարիւր նիզակ ոսկի կռածոյ. և երեքհարիւր դահեկան 'ի վերայ միոյ նիզակի ։ 17 * Եւ երեքհարիւր վէն ոսկի կուռ . և երեք մնաք ոսկիք 'ի մի վէն . և ետ զայն արքայ 'ի տունն անտառին լիբանանու ։ 18 * Եւ արար արքայ աթոռ փղոսկրեայ մեծ . և պատեաց զնա ոսկւով փորձով ։ 19 * Վեց աստիճան աթոռոյն . և դէմք եզանց 'ի թիկանց կողմանէ աթոռոյն . և ձեռք աստի և անտի 'ի տղ աթոռոյն նստելոյ. և երկու առիւծունք կային առ ընթեր ձեռացն ։ 20 * Եւ երկոտասան առիւծք կային 'ի վերայ վեցեցունց աստիճանացն աստի և անտի . և ոչ եղև այնպիսի յամենայն թագաւորութե ։ 21 * Եւ ամ կահ սպասու արքային սաղոմոնի ոսկի գործեալ . և աւազանք ոսկիք . և ամ կահ տան անտառին լիբանանու ոսկւով պատեալ . և ոչ գոյր արծաթ . քանզի ոչ էր համարեալ արծաթ՛ յաւուրս սաղոմոնի՛ թէ իցէ ինչ ։ 22 * Զի նաւ թարսսացի էր սաղոմոնի արքայի 'ի ծովու՛ ընդ նաւս քիրամայ . և յերեքամ գայր արքայի նաւ 'ի թարսսէ . ոսկւոյ . և արծաթոյ . և ժանեաց փղաց . և կապկաց . և սիրամարգաց ։ 23 * Եւ մեծացաւ սաղոմոն քան զամ թագաւորս երկրի մեծութ և իմաստութբ ։ 24 * Եւ ամ թագաւորք երկրի խնդրէին տեսանել զերեսս սաղոմոնի . և լսել զիմաստութի նր . զոր ետ Տր 'ի սիրտ նորա ։ 25 * Եւ նոքա բերէին իւրաքանչիւր զպատարագս իւրեանց . անօթս արծաթեղէնս՛ և անօթս ոսկեղէնս . և հանդերձս . և ստաշխն . և խունկս . և ձիս . և ջորիս . ամի ամի . 26 * ‖ Եւ ժողովեաց սաղոմոն կառս և հեծեալս . և էին սաղոմոնի քառասուն հազար ձիք մատակք կառաց . և երկոտասան հազար երիվարաց . և եդ զնոսա 'ի քաղաքս կառաց. և որ ընդ արքային յերուսաղէմ. (և էր իշխան ամ թագաւորաց 'ի գետոյն մինչև ցայլազգիս. և մինչև ցսահմանս եգիպտացւոց ։) 27 * Եւ ետ արքայ զարծաթ և զոսկի յերուսաղէմ իբրև զքարինս . և զեղևնափայտ իբրև զմոլաթզենիս 'ի դաշտս բազմութբ ։ 28 * Եւ ելք երիվարաց սաղոմոնի յեգիպտոսէ . և 'ի թեկուէ վաճառք արքայի. և առնուին 'ի թեկուայ գնովք ։ 29 * Եւ ելանէին ելք կառաց յեգիպտոսէ փոխանակ արծաթոյ . և ձի ընդ հարիւր և յիսուն արծաթոյ . և նոյնպէս թագաւորացն ամենեցունց . քետտիմայ . և թագաւորացն ասորւոց՛ որք ընդ ծովակողմն ելանէին ։

2.Մն 9.10.

2.Մն 1.14.

## Գլ ։ ԺԱ ։

1 Եւ արքայ սաղոմոն էր իգասէր . ‖ և էառ իւր կանայս օտարոտիս բազումս . և զդուստրն փարաւոնի . և մովաբացիս. և ամոնացիս. և եդոմայեցիս . և ասորիս . և քետացիս . և ամօրհացիս ։ 2 * Եւ յազգացն յորոց վճարեաց Տր որդւոցն Իղի ‖ չմտանել առ նոսա ։ և նոքա մի մտցեն առ ձեզ. թէ դուցէ խոտորեցուցանիցեն զսիրտս ձեր զկնի կռոցն իւրեանց , 'ի նոսա յարեցաւ սաղոմոն սիրել ։ 3 * Եւ էին նորա կանայք տիկնայք եօթնհարիւր . և հարճք երեքհարիւր . և խոտորեցուցին կանայք նորա զսիրտ նորա ։ 4 * Եւ եղև 'ի ժամանակի ծերութեն սաղոմոնի՛ և կանայք նորա խոտորեցուցին

2.Օր 17.17.

[illegible] 47.21.

Ելից 34.16.

զսիրտ նորա զհետ աստուածոց օտա֊
րաց. և ոչ էր սիրտ նր կատարեալ
ընդ Տն Այ իւրոյ՝ իբրև զսիրտն դաւ
թի հօր իւրոյ: *Եւ գնաց սաղոմոն 5
զհետ աստարտայ գարշելւոյ սիդոնա
ցւոց. և զհետ մեղքոմայ գարշելւոյ
որդւոցն ամոնայ: *Եւ արար սաղո֊ 6
մոն չար առաջի Տն. և ոչ չոգաւ զհետ
Տն իբրև զդաւիթ զհայր իւր: *Յայն 7
ժամ շինեաց սաղոմոն զբարձաւան֊
դակն քամովսայ կռոյն մովաբու 'ի լե
րինն հանդէպ եղմի. և մեղքոմայ
կռոց որդւոցն ամոնայ. (և աստար֊
տայ գարշելւոյ սիդոնացւոց:) *Եւ 8
այնպէս արար ամ կանանց իւրոց օտա
րոտւոց. արկանէին խունկս. և զոհէ֊
ին կռոց իւրեանց: *Եւ բարկացաւ 9
Տր սաղոմոնի՝ զի խոտորեցոյց զսիրտ
իւր 'ի Տէ Այ Իղի ‖ որ երևեցաւ նմա
երկիցս: *Եւ պատուիրեաց նմա վն 10
բանին այնորիկ. ամենևին չերթալ
զհետ աստուածոց օտարաց. և պահել՝
և առնել՝ զոր պատուիրեաց նմա Տր
Այ: *Եւ ասէ Տր ցսաղոմոն. փոխա 11
նակ զի եղև այդ ընդ քեզ. և ոչ պա֊
հեցեր զհրամանս իմ, և զպատուի֊
րանս՝ զոր պատուիրեցի քեզ. ‖ պատա
ռելով պատառեցից զթագաւորութիւն
'ի ձեռանէ քումմէ՝ և տաց զդա ծա֊
ռայի քում: *Բայց 'ի քո աւուրս ոչ 12
արարից զայն վն դաւթի հօր քո՝ այլ
'ի ձեռանէ որդւոյ քո առից զդա:
*Սակայն զամ թագաւորութիւն ոչ 13
առից. գաւազան մի տաց որդւոյ քում
վասն դաւթի ծառայի իմոյ. և վասն
եղմի քաղաքի՝ զոր ընտրեցի: *Եւ յա 14
րոյց Տր սատան սաղոմոնի զադեր զե
դոմայեցի 'ի զաւակէ թագաւորու֊
թեն եդոմայեցւոց: *‖ Եւ եղև 'ի սա 15
տակել դաւթի զեդոմ. յերթալ յո֊
վաբայ իշխանի զօրուն թաղել զվի֊
րաւորսն. զի կոտորեցին զամ արու
յեդոմ: *Զի զվեց ամիս նստաւ անդ 16
յովաբ՝ և ամ իէլ յեդոմ. մինչև սա֊
տակեաց զամ արու եդոմայեցւոց:
*Եւ փախեաւ ադեր՝ ինքն և ամե֊ 17
նայն արք եդոմայեցիք 'ի ծառայից
հօր նր՝ և մտին յեգիպտոս. և ադեր
մանուկ փոքր էր: *Եւ յարեան արքն 18
'ի քաղաքէ անտի մադիամու՝ և եկին
'ի փարան. և առին ընդ իւրեանս արս
'ի փարանէ՝ և եկին յեգիպտոս առ փա
րաւոն արքայ եգիպտացւոց. և եմուտ
ադեր առ փարաւոն. և ետ նմա տուն՝
և կարգեաց նմա հաց. և ետ նմա գե
տին: *Եւ եգիտ ադեր շնորհս առա 19
ջի փարաւոնի յոյժ. և ետ նմա կին
զքոյր կնոջ իւրոյ. զքոյր թեկեմինայ

‖ Վեր. 9. 2. և 6. 12.

‖ Ներք. 12. 15.

‖ 2 Թագ. 8. 14.

20 զերեց: *Եւ ծնաւ քոյրն թեկեմի֊
նայ ադերայ զգանեբաթ զորդի նր.
և սնոյց զնա թեկեմինա 'ի մէջ որդ֊
ւոցն փարաւոնի. և էր գանեբաթ 'ի
տան փարաւոնի՝ 'ի մէջ որդւոցն փա
21 րաւոնի: *Եւ լուաւ ադեր յեգիպ֊
տոս՝ եթէ ննջեաց դաւիթ ը հարս
իւր. և եթէ մեռաւ յովաբ իշխան զօ
րուն. և ասէ ադեր ցփարաւոն. ար֊
ձակեա զիս՝ և դարձայց յերկիր իմ:
22 *Եւ ասէ փարաւոն ցադեր. զինչ
պակաս է քեզ առ իս՝ զի խնդրես եր
թալ յերկիր քո. և ասէ ցնա ադեր.
զի արձակելով արձակեսցես զիս. և
23 դարձաւ ադեր յերկիր իւր: *Եւ յա֊
րոյց Տր սատան սաղոմոնի ‖ զռազոն
զորդի եղիադայ. որ փախեաւ յադրիա
զարայ արքայէ սուբայ 'ի տեառնէ
24 իւրմէ: *Եւ ժողովեցան առ նա արք.
և էր իշխան գնդին՝ 'ի կոտորել զնոսա
դաւթի. և գնացին 'ի դամասկոս՝ և
նստան 'ի նմա. և թագաւորեաց 'ի
25 դամասկոս: *Եւ եղև հակառակ իղի
զամ աւուրս սաղոմոնի. այս է չարու
թիւն ադերայ՝ և ծանրացաւումն եղև
իղի. և թագաւորեաց յերկրին եդո֊
26 մայ: ‖ *Եւ յերոբովամ որդի նաբա
տայ եփրաթացի 'ի սարիրայ. և անուն
մօր նորա սարուա կին այրի. և նա էր
որդի կնոջ այրւոյ՝ ծառայ սաղոմոնի.
27 և ամբարձ զձեռն իւր յարքայ: *Եւ
այն իրք էին զի վերացոյց զձեռն իւր
յարքայ սաղոմոն. շինեաց զբարձաւ
անդակն. և եխից զխրամ քաղաքին
28 դաւթի հօր իւրոյ: *Եւ այրն յերո֊
բովամ հզօր զօրութբ. իբրև ետես սա
ղոմոն զպատանեակն եթէ այր գոր֊
ծոյ է. կացոյց զնա 'ի վերայ բեռնա֊
29 կրաց տանն յովսեփայ: *‖ Եւ եղև 'ի
ժամանակին յայնմիկ. և ել յերոբովամ
յերուսաղեմէ. և եգիտ զնա աքիա սի
լոնացի մարգարէ 'ի ճանապարհի. և
մեկուսացոյց զնա 'ի ճանապարհէն. և
աքիա զգեցեալ էր հանդերձ նոր. և
30 երկոքեան 'ի դաշտին: *Եւ բուռն
եհար աքիա զհանդերձէն իւրմէ զնո֊
րոյ, որ 'ի վն իւր. և պատառեաց զնա
31 յերկոտասան կապերտս: *Եւ ասէ
ցյերոբովամ. առ դու քեզ զտասն կա
պերտսդ. զի այսպէս ասէ Տէր Այ
իղի՝ ահա ես պատառեցից զթագաւո
րութիւն 'ի ձեռաց սաղոմոնի. և տաց
32 քեզ զտասն գաւազանսն: *Եւ եր֊
կու գաւազանքն եղիցին նր՝ վն դաւ
թի ծառայի իմոյ՝ և վասն եղմի քա֊
ղաքի՝ զոր ընտրեցի յամենայն ցեղից
33 իղի: *Փոխանակ զի եթող զիս. և
երկիր եպագ աստարտայ գարշելւոյ
սի֊

‖ 2 Թագ. 8. 3.

‖ 2. Մն. 13. 6.

‖ 2. Մն. 10. 15.

սիդոնացւոց․ եւ քամոսայ կռոց մովաբու․ եւ մելքոմայ զազրութեայ որդւոցն ամոնայ․ եւ ոչ գնաց 'ի ճանապարհս իմ առնել ուղղութիւն առաջի իմ․ եւ զճշմարտութիւնս՝ եւ զդատաստանս իմ իբրեւ զդաւիթ զհայր իւր ։ 34 *Եւ ոչ առից զամենայն թագաւորութիւն 'ի ձեռանէ նորա․ զի հակառակութեամբ կացից հակառակ նմա զամ աւուրս կենաց նորա․ վասն դաւթի ծառայի իմոյ զոր ընտրեցի․ որ պահեաց զպատուիրանս իմ, եւ զճշմարտութիւնս ։

35 *Եւ առից զթագաւորութիւն 'ի ձեռանէ նր․ եւ տաց քեզ զտասն գաւառզանսն ։ 36 *Եւ որդւոյ նր տաց զերկուս գաւառանսն․ վասն մնալոյ ճրագի ծառայի իմում դաւթի զամենայն աւուրս առաջի իմ յերուսաղէմ քաղաքի՝ զոր ընտրեցի դնել զանուն իմ անդ ։ 37 *Եւ զքեզ առից․ եւ թագաւորեսցես, որոց եւ ցանկասցի անձն քո․ եւ դու եղիցիս թագաւոր 'ի վր իէլի ։ 38 *Եւ եղիցի՝ եթէ պահեսցես զամ ինչ՝ զոր ես պատուիրեմ քեզ․ եւ գնասցես 'ի ճանապարհս իմ․ եւ արասցես ուղղութիւն առաջի իմ․ զգուշանալ պատուիրանաց իմոց՝ եւ հրամանաց իմոց՝ որպէս արար դաւիթ ծառայ իմ․ եւ եղէց ընդ քեզ՝ եւ շինեցից քեզ տուն հաւատարիմ՝ որպէս շինեցի դաւթի․ եւ տաց քեզ զիէլ ։ 39 *Եւ չարչարեցից զզաւակն դաւթի վս այնորիկ․ բայց ոչ զամ աւուրս ։ 40 *Եւ խնդրեաց սողոմոն սպանանել զյերոբովամ՝ եւ յարեաւ յերոբովամ եւ փախեաւ յեգիպտոս՝ առ սոսակիմ արքայ եգիպտացւոց․ եւ էր յեգիպտոս մինչեւ մեռաւ սողոմոն ։ 41 *Եւ մնացորդք բանիցն սողոմոնի․ եւ ամ ինչ զոր արար․ եւ ամ իմաստութիւն նորա․ ոչ աւանիկ գրեալ է 'ի գիրս բանից սողոմոնի ։ 42 *Եւ աւուրք՝ զորս թագաւորեաց սողոմոն յերուսաղէմ 'ի վր ամ իսրայէլի ամք քառասուն ։ 43 *Եւ ննջեաց սողոմոն ընդ հարս իւր՝ եւ թաղեցին զնա 'ի քաղաքի դաւթի հօր իւրոյ ։ եւ թագաւորեաց ռոբովամ որդի նորա ընդ նորա ։

զի պաշտ
պանելով
պաշտպան
եղեց նմա

## ԳԼ․ ԺԲ․

Բ.Մն. 10.1.

1 Եւ ‖ չոգաւ արքայ ռոբովամ 'ի սիկիմ․ զի 'ի սիկիմ գայր ամ իէլ թագաւորեցուցանել զնա ։ 2 *Եւ եղեւ իբրեւ լուաւ յերոբովամ որդի նաբատայ․ եւ ինքն էր տակաւին յեգիպտոս յորմէհետէ փախեաւ յերեսաց արքայի սողոմոնի․ եւ դարձաւ յերոբովամ յեգիպտոսէ ։ 3 *Եւ առաքեցին՝ եւ կոչեցին զնա․ եւ եկն յերոբովամ եւ ամ եկեղեցին իէլի․ եւ խօսեցաւ ամ ժողովուրդն ընդ արքայի ռոբովամայ՝ եւ ասեն ։ 4 *Հայր քո ծանրացոյց զանուր մեր․ եւ դու թեթեւացո 'ի խիստ ծառայութենէ հօր քոյ՝ եւ 'ի ծանր անրոյ նր զոր եդ 'ի վր մեր․ եւ ծառայեսցուք քեզ ։ 5 *Եւ ասէ ցնոսա․ երթայք մինչեւ ցերիս աւուրս․ եւ դարձջիք առ իս ։ եւ գնացին ։ 6 *Եւ խորհեցաւ արքայ ռոբովամ ընդ ծերսն որք կային առաջի սողոմոնի հօր նր՝ մինչդեռ կենդանի էր․ եւ ասէ ։ զիա՞րդ խորհիք՝ եւ տացուք պատասխանի ժողովրդեանն ։ 7 *Եւ խօսեցան ընդ նմա՝ եւ ասեն․ եթէ յաւուր յայսմիկ լինիցիս ծառայ ժողովրդեանն այնմիկ՝ եւ ծառայեսցես նոցա․ եւ անսասցես նց, եւ խօսեսցիս ընդ նոսա բանս բարիս․ եղիցին քեզ ծառայք զամ աւուրս ։ 8 *Եւ եթող զխորհուրդ ծերոցն՝ զոր խորհեցաւ ընդ նոսա․ եւ խորհեցաւ ընդ մանկտին սննդակիցս իւր՝ որք կային առաջի նր ։ 9 *Եւ ասէ ցնոսա․ զի՞նչ տայք խրատ․ եւ տաց պատասխանի ժողովրդեանն՝ որք խօսեցան ընդ իս եւ ասեն․ թեթեւացո յանրոյն՝ զոր եդ 10 հայր քո 'ի վր մեր ։ *Եւ խօսեցան ընդ նմա մանկտիքն սննդակիցք իւր՝ որք կային առաջի նր՝ եւ ասեն ։‖ այսպէս խօսեսցիս յականջս ժողովրդեանն՝ որք խօսեցան ընդ քեզ՝ եւ ասեն․ հայր քո ծանրացոյց զանուր մեր․ եւ դու թեթեւացո 'ի մէնջ․ այսպէս խօսեսցիս ընդ նոսա ։ ծկոյթ իմ ստուար է քան զմէջ հօր իմոյ ։ 11 *Եւ արդ՝ հայր իմ եդ 'ի վերայ ձեր անուր ծանր՝ եւ ես յաւելից յանուրն ձեր ։ հայր իմ խրատեաց զձեզ գանիւք․ եւ ես խրատեցից զձեզ քթովք ։ 12 *Եւ եկն ամ իսրայէլ առ արքայ ռոբովամ յաւուրն երրորդի՝ որպէս խօսեցաւ ընդ նոսա արքայ՝ եւ ասէ ։ դարձջիք առ իս յաւուրն երրորդի ։ 13 *Եւ պատասխանի ետ արքայ ժողովրդեանն խստութեամբ․ եւ եթող ռոբովամ զխորհուրդ ծերոցն՝ զոր խորհեցան ընդ նմա ։ 14 *Եւ խօսեցաւ ընդ նոսա ըստ խորհրդեան մանկտւոյն՝ եւ ասէ․ հայր իմ ծանրացոյց զանուր ձեր՝ եւ ես յաւելից յանուր ձեր․ հայր իմ խրատէր զձեզ գանիւք՝ եւ ես խրատեցից զձեզ քթովք ։ 15 *Եւ ոչ լուաւ արքայ ժողովրդեանն․ զի էր խոտորումն 'ի Տէ․ զի հաստատեսցէ՝ ‖ զոր խօսեցաւ 'ի ձեռն աքիայ սիլոնացւոյ․ վասն յերոբովամայ որդւոյ նաբատայ ։ 16 *Իբրեւ տեսին ամ իէլ՝ եթէ ոչ լուաւ նց արքայ․ պատասխանի ետ ժողովուրդն արքայի՝

Սիրաք. 47.28.

Վեր. 11.31.

եւ

և ասէ. զի՞նչ բաժին կայ մեր ընդ դաւթի. և ո՛չ գոյ մեր ժառանգութի ընդ որդւոյ յեսսեայ. սնտեա՛ց ՚ի բնակութիս քո իսրայէլ: և արդ դու աւ րածեա՛ զտունն դաւթի : և գնաց իէլ ՚ի բնակութիս իւր : 17 *Եւ որդւոցն իէլի՝ որք նստէին ՚ի քաղաքս յուդայ՝ թագաւորեաց ռոբովամ : 18 *Եւ առաքեաց արքայ ռոբովամ զադոնիրամ հարկապետ. և քարկոծեցին զնա ամ իսրայէլ քարամբք՝ և մեռաւ : և արքայ ռոբովամ աճապարեաց ելանել ՚ի կառս՝ փախչիլ յեմ : 19 *Եւ արհամարհեաց իէլ զտունն դաւթի մինչև ցայսօր : 20 *Եւ եղև իբրև լուաւ ամ իէլ՝ եթէ դարձաւ յերոբովամ, առաքեցին՝ և կոչեցին զնա ժողովուրդն. և թագաւորեցուցին զնա ՚ի վե իէլի: և ո՛չ ոք էր զհետ տանն դաւթի. բայց միայն ՚ի գաւազանէ տանն յուդայ, և բենիամինի : 21 *Եւ ռոբովամ եմուտ յեմ. և եկեղեցացոյց զժողովուրդն յուդայ. և զգաւազանն բենիամինի հարիւր և ութսուն հազար երիտասարդաց պատերազմողաց՝ պատերազմիլ ընդ տանն իէլի. դարձուցանել զթագաւորութիւն ռոբովամայ որդւոյ սողոմոնի : 22 *‖Եւ եղև բան Տն առ սամեա այր Այ՝ և ասէ : 23 *Խօսեա՛ց ընդ ռոբովամայ որդւոյ սողոմոնի արքայի յուդայ. և ընդ ամ տանն յուդայ՝ և բենիամինի. և ընդ մնացորդս ժողովրդեանն՝ և ասասցես : 24 *Այսպէս ասէ Տր: մի՛ ելանիցէք՝ և մի՛ տայք պատերազմ ընդ եղբարս ձեր՝ ընդ որդիսն իէլի. դարձցի իւրաքանչ իւրոք ՚ի տուն իւր. զի յինէն եղև բանն այն : և լուան բանի Տն: և դադարեցին յերթալոյ՝ ըստ բանին Տն: 25 *Եւ շինեաց յերոբովամ զսիկիմ ՚ի լերինն եփրեմայ՝ և բնակէր ՚ի նմա: և ել անտի՝ և շինեաց զփանուէլ : 26 *Եւ ասէ յերոբովամ ՚ի սրտի իւրում. ահա արդ դառնայցէ թագաւորութիւն իմ ՚ի տունն դաւթի : 27 *Եթէ ելանիցէ ժողովուրդս զոհել զոհս ՚ի տան Տն յեմ. և դառնայցէ սիրտ ժողովրդեանս այսորիկ առ Տէր. և առ տէր իւրեանց ռոբովամ արքայ յուդայ. և սպանանիցեն զիս. և դառնայցեն առ ռոբովամ արքայ յուդայ: 28 *‖Եւ խորհեցաւ արքայ. և չոգաւ՝ և արար երկու երինջս ոսկիս. և ասէ ցժողովուրդն. շատ լիցի ձեզ ելանել յեմ. ‖ահա աստուածք քո իէլ՝ որք հանին զքեզ յերկրէն եգիպտացւոց : 29 *Եւ եդ զմին ՚ի դան՝ և զմիւսն ՚ի բեթէլ: 30 *Եւ եղև բանն այն ՚ի մեղս. և եր‿

թայր ժողովուրդն առաջի երեսաց միոյն մինչև ցդան : 31 *Եւ արար տունս ՚ի վերայ բարձանց: ‖և արար քուրմս զմասն ինչ ժողովրդեանն որք ո՛չ էին ՚ի տանէ ղևեայ : 32 *Եւ արար յերոբովամ տօն յամսեանն ութերորդի՝ յաւուր հնգետասաներորդի նորին ամսոյ՝ ըստ տօնին՝ որ յերկրին յուդայ. և ել ՚ի սեղանն՝ զոր արար ՚ի բեթէլ՝ զոհել երնջոցն զոր արար : և կացոյց ՚ի բեթէլ քուրմս բարձանցն՝ զոր արար: 33 *Եւ ել ՚ի սեղանն՝ զոր արար ՚ի բեթէլ. որ օր հնգետասան էր ամսոյն ութերորդի ՚ի տօնին : առեղծ ՚ի սրտէ իւրմէ. և արար տօնս որդւոցն իէլի. ել ՚ի սեղանն զոհել:

ԳԼ: ԺԳ:

1 Եւ ահա այր Այ եհաս ՚ի յուդայէ բանիւ Տն ՚ի բեթէլ. և յերոբովամ կայր ՚ի վե սեղանոյն իւրոյ զո հել ՚ի վե: 2 *Եւ կոչեաց զսեղանն բանիւ Տն և ասէ. սեղան, սեղան. այսպէս ասէ Տր: ‖ահա որդի ծնցի տան դաւթի. յովսիա անուն նր. և զոհեսցէ ՚ի վերայ քո զքուրմս բարձանցդ՝ որք զոհեն ՚ի վե քո. և զոսկերս մարդկան այրեսցէ ՚ի վե քո : 3 *Եւ ետ յաւուր յայնմիկ նշան՝ և ասէ. այս նշանէ՝ զոր խօսեցաւ Տր՝ և ասէ. ահա սեղանդ պատառեսցի. և հեղցի պարարտութիւն՝ որ ՚ի վերայ դորա : 4 *Եւ եղև իբրև լուաւ արքայ յերոբովամ զբանս առնն Այ բարբառելոյ սեղանոյն ՚ի վե՝ որ ՚ի բեթէլ՝ ձգեաց արքայ զձեռն իւր ՚ի սեղանոյ անտի և ասէ : կալարո՛ւք զդա. և գօսացաւ ձեռն նր՝ զոր ձգեաց ՚ի նա. և ո՛չ կարաց դարձուցանել զնա առ ինքն : 5 *Եւ սեղանն պատառեցաւ՝ և հեղաւ պարարտութիւն ՚ի սեղանոյ անտի՝ ըստ նշանին զոր ետ այրն Այ՝ ըստ բանի Տն: 6 *Եւ ասէ արքայ յերոբովամ ցայրն Այ. աղաչեա՛ զերեսս Տն Այ քո. և արա՛ աղօթս վս իմ. և դարձցի ձեռն իմ առ իս: և աղաչեաց այրն Այ առաջի Տն. և դարձաւ ձեռն արքայի առ նա. և եղև իբրև զառաջինն: 7 *Եւ խօսեցաւ արքայ ընդ առնն Այ՝ և ասէ. մուտ ընդ իս ՚ի տուն՝ և ճաշեա՛. և տա՛ց քեզ պարգևս: 8 *Եւ ասէ այրն Այ ցարքայ. եթէ տայցես ինձ զկէս տան քոյ. ո՛չ մտից ընդ քեզ. և ո՛չ կերից զհաց. և ո՛չ արբից զջուր ՚ի տեղւոջս յայսմիկ : 9 *Զի այսպէս պատուիրեաց ինձ Տր բանիւ և ասէ : մի՛ ուտիցես զհաց. և մի՛ ըմպիցես զջուր. և մի՛ դառնայցես ընդ նոյն ճանապարհ. ընդ

‖3.Մն 11.2.

‖Տոբ. 1.5.

‖Ելից. 32.8.

‖2.Մն 11.15.

‖4 Թագ 23.16.

ընդ որ երթայցես ։ 10 *Եւ գնաց զճանապարհ իւր․ այլ ոչ ընդ նոյն ճանապարհ՝ ընդ որ եկն՝ գնաց 'ի բեթելայ ։

11 *Եւ մարգարէ մի ծեր բնակեալ էր 'ի բեթէլ․ և եկին որդիք նր՟․ և պատմեցին նմա զա՟մ զգործսն․ զոր արար այրն Ա՟Յ յաւուր յայնմիկ 'ի բեթէլ․ և զբանսն․ զոր խօսեցաւ ընդ արքայի․ և դարձուցին զերեսս հօրն իւրեանց ։

12 *Եւ խօսեցաւ ընդ նոսա հայրն նց՟ և ասէ ։ ընդ ո՞ր ճանապարհ գնաց ։ և ցուցին նմա որդիք նր՟ զճանապարհն՝ ընդ որ գնաց այրն Ա՟Յ․ որ եկեալ էր 'ի յուդայէ ։

13 *Եւ ասէ ցորդիս իւր․ կազմեցէք զէշն․ և կազմեցին նմա զէշ․ և ել 'ի նա ։

14 *Եւ գնաց զհետ առնն Ա՟Յ․ և եգիտ զնա նստեալ ը՟ կաղնւով ։ և ասէ ցնա՝ եթէ դու իցես այրն Ա՟Յ, եկեալ 'ի յուդայէ․ և ասէ․ ես եմ ։

15 *Եւ ասէ ցնա․ եկ ընդ իս 'ի տուն․ և կեր զհաց ։

16 *Եւ ասէ․ ո՛չ կարեմ դառնալ ընդ քեզ․ և ոչ գալ ընդ քեզ․ և ոչ կերից զհաց․ և ո՛չ արբից ջուր 'ի տեղւոջս յայսմիկ ։

17 *Զի այսպէս հրամանս տուեալ է ինձ բանիւ Տ՟ն․ և ասացեալ․ թէ մի՛ ուտիցես անդ հաց․ և մի՛ ըմպիցես ջուր․ և մի՛ դառնայցես ընդ նոյն ճանապարհ՝ ընդ որ երթայցես ։

18 *Եւ ասէ ցնա․ և ես մարգարէ եմ իբրև զքեզ․ և հրեշտակ Տ՟ն խօսեցաւ ընդ իս՝ և ասէ․ դարձո՛ զնա առ քեզ 'ի տուն քո․ և կերիցէ հաց՝ և արբցէ ջուր․ և ստեաց նմա ։

19 *Եւ դարձոյց զնա ընդ իւր․ և եկեր զհաց 'ի տան նորա․ և էարբ ջուր ։

20 *Եւ լինէր մինչ դեռ նստէին նոքա 'ի սեղանն․ և եղև բան Տ՟ն առ մարգարէն․ որ դարձոյց զնա ։

21 *Եւ խօսեցաւ ընդ առնն Ա՟Յ եկելոյ 'ի յուդայէ՝ և ասէ ։ այսպէս ասէ Տ՟ր ։ փոխանակ զի դառնացուցեր զբանն Տ՟ն․ և ո՛չ պահեցեր զպատուէրն՝ զոր պատուիրեաց քեզ Տ՟ր Ա՟Ծ քո ։

22 *Եւ դարձար՝ և կերեր զհաց․ և արբեր զջուր 'ի տեղւոջ յայդմիկ՝ զորմէ խօսեցաւ ընդ քեզ՝ և ասէ․ մի՛ ուտիցես զհաց՝ և մի՛ ըմպիցես զջուր ։ արդ մի՛ մտցէ մարմին քո 'ի գերեզմանս հարց քոց ։

23 *Եւ եղև յետ ուտելոյն նորա զհաց․ և ըմպելոյ զջուր, համբերձեաց զէշ մարգարէին․ և դարձաւ՝ և գնաց ։

24 *Եւ եգիտ զնա առիւծ 'ի ճանապարհին․ և սպան զնա ։ և էր մարմին նորա ընկեցեալ 'ի ճանապարհին․ և էշն կայր առ նմա․ և առիւծն կայր առ մարմինն ։

25 *Եւ ահա արք անցաւորք տեսին զմեռեալն՝ ընկեցեալ 'ի ճանապարհին․ և առիւծն կայր առ ընթեր մեռելոյն․ և մտին, և խօսեցան 'ի քաղաքին՝ ուր մարգարէն ծեր բնակեալ էր ։

26 *Իբրև լուաւ․ որ դարձոյցն զնա 'ի ճանապարհէն, ասէ․ այն այրն Ա՟Յ է․ որ դառնացոյց զբանն Տ՟ն․ և ետ զնա Տ՟ր առիւծու․ և եբեկ զնա․ և սպան զնա ըստ բանին Տ՟ն․ զոր խօսեցաւ ընդ նմա ։

27 *Եւ խօսեցաւ ընդ որդիսն իւր՝ և ասէ ։ համբերձեցէք զէշն․ և համբերձեցին ։

28 *Եւ գնաց՝ և եգիտ զմարմին նր՟ ընկեցեալ 'ի ճանապարհին․ և էշն՝ և առիւծն կային առ մարմինն ։ և ո՛չ եկեր առիւծն զմարմին առնն Ա՟Յ․ և ո՛չ եբեկ զէշն ։

29 *Եւ եհան մարգարէն զմարմին առնն Ա՟Յ․ և եդ զնա 'ի վերայ իշոյն․ և դարձոյց զնա․ և եկն 'ի քաղաք մարգարէին ծերոյ կոծել՝ և թաղել զնա ։

30 *Եւ ցածոյց զդին նր՟ մարգարէն 'ի թաղել զնա 'ի գերեզմանի իւրում․ և կոծեցան զնա՝ և ասեն․ վա՜յ եղբայր ։

31 *Եւ եղև յետ կոծելոյն զնա․ խօսեցաւ ընդ որդիսն իւր՝ և ասէ․ եթէ մեռանիցիմ, թաղեսջիք զիս յայսմ՝ գերեզմանի՝ ուր թաղեցաւ այրս Ա՟Յ․ առ ոսկերս դորա դիջիք զիս ։ զի ապրեսցին ոսկերք իմ ընդ ոսկերս դորա ։

32 *Զի լինելով լինիցի բանն․ զոր խօսեցաւ բանիւ Տ՟ն 'ի վ՟ր սեղանոյն 'ի բեթէլ․ և 'ի վ՟ր տանց բարձանց որք 'ի սամարիայ ։

33 *Եւ յետ բանիցս այսոցիկ ո՛չ դարձաւ յերոբոամ՝ 'ի չարեաց իւրոց․ և դարձաւ՝ և արար 'ի մասնէ ժողովրդեանն քուրմս բարձանց ։ որ կամէր լնոյր զձեռս իւր․ և լինէր քուրմ բարձանց ։

34 *Եւ եղև բանն այն 'ի մեղս տանն յերոբոամայ․ և 'ի սատակումն՝ և յապականութիւն յերեսաց երկրին ։

## ԳԼ․ ԺԴ ։

1 Ի ժամանակի յայնմիկ հիւանդացաւ աբիա որդի յերոբովամայ ։

2 *Եւ ասէ յերոբովամ ցկին իւր․ արի, և այլակերպեա՛ց․ և մի՛ գիտասցեն թէ դու կին յերոբովամայ իցես․ և երթիցես 'ի սելով․ ահա անդ է աքիա մարգարէ․ ‖ նա խօսեցաւ վասն իմ թագաւորել 'ի վ՟ր ժողովրդեանս այսորիկ ։ (‖ Վեր․ 11․ 31․)

3 *Եւ ա՛ռ 'ի ձեռին քո առնն Ա՟Յ հաց և բլիթս որդւոց նորա․ և չամիչ՝ և ստոման մի մեղու․ և երթիցես առ նա․ և պատմեսցէ քեզ զինչ լինելոց իցէ մանկանն ։

4 *Եւ արար այնպէս կինն յերոբովամու․ և յարեաւ՝ և գնաց 'ի սելով․ և եմուտ 'ի տուն աքիայ․ և այրն ծերացեալ 'ի տեսանելոյ․ և վատեալ աչք իւր 'ի ծերութենէ իւրմէ ։

5 *Եւ ասէ Տ՟ր ցաքիա․ ահա

կինն

կնոջն Յերոբովամայ գայ հարցանել բան 'ի քէն վս որդւոյ իւրոյ․ զի հիւանդ է ․ զայս ինչ՝ և զայս ասասցես նմա ։ * Եւ եղև 'ի մտանելն նորա ․ 6 և ինքն յանծանօթս լինէր․ և եղև իբրև լուաւ աքիա զձայն ոտից նորա․ 'ի մտանել նր․ և 'ի բանալ ․ ասէ՝ մուտ կին յերոբովամու ․ ընդէ՞ր իցէ այդ՝ զի յանծանօթս լինիս․ և ես եմ առաքեալ առ քեզ խստութբ ։ * Ո՛րթ՝ 7 և ասա՛ ցյերոբովամ․ այսպէս ասէ Տր Ած իղի․ փոխանակ զի բարձրացուցի զքեզ 'ի միջոյ ժողովրդեանդ ։ և ետու զքեզ յառաջնորդ 'ի վերայ ժողովրդեան իմոյ իղի ։* Եւ պատառեցի 8 զթագաւորութիւն 'ի տանէն դաւթի․ և ետու զնա քեզ․ և ոչ եղեր իբրև զծառայ իմ դաւիթ․ որ պահեաց զպատուիրանս իմ․ և եկն զկնի իմ ամ սրտիւ իւրով՝ առնել ուղղութի առաջի իմ։ * Եւ չարացար՝ առնել 9 քան զամենեսին ․ որք եղեն յառաջ քան զքեզ․ և գնացեր․ և արարեր քեզ աստուածս օտարոտիս․ և ձուլածոյս՝ բարկացուցանել զիս ։ և զիս ընկեցեր յետս 'ի մարմնոյ քումմէ ։ *Վասն այ 10 սորիկ ես ածից չարիս 'ի վերայ տանն յերոբովամայ․ ‖ և սատակեցից զյերոբովամայ ․ որ միզիցէ զորմով ։ կծկեալ և լքեալ 'ի մէջ իղի․ և հաւաքեցից զհետ տանն յերոբովամայ․ որպ հաւաքիցի աղբ՝ մինչև սպառել զնա ։ * Զմեռեալսն յերոբովամու 'ի քաղաքի, կերիցեն շունք ․ և զմեռեալս յանդի, կերիցեն թռչունք երկնից ․ զի Տր խօսեցաւ ։ * Եւ դու արի՛ գնա 12 'ի տուն քո․ և 'ի մտանել ոտից քոց 'ի քաղաքն՝ մեռցի մանուկն ։ * Եւ կոծեսցեն զնա ամ իսրայէլ․ և թաղեսցեն զնա․ զի նա միայն յերոբովամայ մտցէ 'ի գերեզման ․ զի գտաւ 'ի նմա բան բարի՝ վասն Տն Այ իսրայէլի՝ 'ի տան յերոբովամայ ։ * Եւ յարուսցէ Տէր 14 իւր թագաւոր 'ի վր իղի ․ որ հարցէ զտունն յերոբովամայ յաւուր յայսմիկ։ * Եւ արդ ( զի՞նչ և ս ) հարցէ Տր զիղլ․ 15 որպ շարժի եղէգն 'ի ջուր ․ և խլեսցէ Տր զիղլ յերկրէս բարութենէ յայսմանէ ․ զոր ետ հարց նոցա ․ և հոսեսցէ զնս յայնկոյս գետոյն ․ փոխանակ զի արարին իւրեանց անտառս բարկացուցանել զՏր ։ * Եւ մատնեսցէ Տր 16 զիղլ վս մեղացն յերոբովամու ․ որ մեղաւ՝ և մեղոյց զիղլ ։ * Եւ յարեաւ 17 կինն յերոբովամու ․ և գնաց 'ի սարիրա ․ և եղև իբրև եմուտ առաջի դրան տանն, մեռաւ մանուկն ։ * Եւ 18 կոծեցան զնա, և թաղեցին ամ իղլ ըստ բանին Տն ․ զոր խօսեցաւ 'ի ձեռն ծառայի իւրոյ աքիայ մարգարէի ։

19 * Եւ մնացորդք բանից յերոբովամայ՝ թէ որչափ պատերազմեցաւ ․ և որչափ թագաւորեաց ․ ահա գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն իղի ։ 20 * Եւ աւուրք զորս թագաւորեաց յերոբովամ․ ամք քսան և երկու․ և ննջեաց ընդ հարս իւր ։ և թագաւորեաց նաբատ որդի նր ընդ նորա ։ 21 * ‖ Եւ ռոբովամ որդի սողոմոնի թագաւորեաց 'ի վր յուդայ ։ որդի քառասուն և մի ամաց ռոբովամ 'ի թագաւորել իւրում, և եօթնուտասն ամ թագաւորեաց յէմ քաղաքի՝ զոր ընտրեաց Տէր դնել զանուն իւր անդ, յամ ցեղից իղի ։ և անուն 22 մօր նր նաամա ամմանացի ։ * Եւ արար ռոբովամ չար առաջի Տն ․ և նախանձեցաւ ընդ ամ ․ զոր արարին հարք նր․ և ըստ մեղաց նց․ զորս մեղան ։ 23 * Եւ շինեցին նոքա իւրեանց բարձունս՝ և անտառս 'ի վր ամ բլրոյ բարձու ․ և 'ի ներքոյ ամ վարսաւոր 24 ծառոց ։* Եւ նուէրք եղեն յերկրին ․ և արարին յամ գարշութեանց ազգացն՝ զորս եբարձ Տէր յերեսաց որդւոցն իղի ։ 25 * Եւ եղև 'ի հինգերորդ ամին թագաւորեաց ռոբովամ․ ել սուսակիմ արքայ եգիպտոսի 'ի վր եէմի։ 26 * ‖ Եւ էառ զամ գանձս տանն Տն ․ և զգանձս տանն արքայի․ և զնիզակսն ոսկիս․ ( զոր էառ դաւիթ 'ի ձեռաց ադրաազարայ արքայի սուբայ ․ և տարաւ յէմ զամ ․ զոր էառ ։ և էառ զվահանս ոսկիս ) զոր արար սողոմոն ։ 27 *Եւ արար արքայ ռոբովամ փոխանակ նոցա զէնս պղնձիս ։ և դիմեցին 'ի վերայ նր զօրագլուխք սուրհանդակացն․ որք պահէին զդրունս տանն 28 արքայի ։ * Եւ լինէր յորժամ մտանէր արքայ 'ի տունն Տն ․ բառնային զայն սուրհանդակքն․ և յեցուցանէին 29 զնս 'ի թեւէ սուրհանդակացն ։ * Եւ մնացորդք բանիցն ռոբովամայ ․ և ամ ինչ զոր արար ․ ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ ։ 30 * Եւ պատերազմ էր 'ի մէջ ռոբովամայ և 'ի մէջ յերոբո-31 վամայ զամենայն աւուրս ։ * Եւ ննջեաց ռոբովամ ընդ հարս իւր ․ և թաղեցաւ ընդ հարս իւր 'ի քաղաքի դաւթի ։ և թագաւորեաց աբիու որդի նորա ընդ նորա ։

## Գլ. ԺԵ.

1 Յամին ութուտասներորդի թագաւորութեանն յերոբովամայ որդւոյ

դըրանն

‖ Մնաց. 15.29.

Բ.Մն. 13.2.

‖ Բ.Մն. 12.1. և 13.

Բ.Թ. 11.4.

Բ.Մն. 13.2.

Բ.Մն. 14.

‖ Մն. 10.16.

Բ.Մն. 16.

որդւոյ Նաբատայ. Թագաւորէ աքիու որդի Ռոբովամայ 'ի վերայ յուդայ:

Բ.Մնա 13.2.

2 *Եւ զերիս ամս Թագաւորեաց 'ի վ̃ր եէմի. և անուն մօր նորա մաաքա դուստր աբեսաղոմայ: 3 *Եւ գնաց 'ի մեղս հօր իւրոյ. զոր արար առաջի Տ̃ն Ա̃Յ իւրոյ. և ոչ էր սիրտ նորա կատարեալ ը̃ Տ̃ն Ա̃Յ իւրոյ՝ իբրև զսիրտն դաւթի հօր իւրոյ: 4 * Այլ 'ի ձեռն դաւթի ետ նմա Տէր Ա̃Ծ մնացորդ յեէմ. զի կացուսցէ զորդիս նր̃ յետ նորա. և հաստատեսցէ զեէմ: 5 * Ո̃ր արար դաւիթ ուղղութի առաջի Տ̃ն. և ոչ խոտորեցաւ յա̃մէ. զոր պատուէիրեաց նմա զա̃մ աւուրս կենաց իւրոց. Բայց 'ի բանէն ուրիայ քետացւոյ:

Գ Թագ 11.4.

6 * Եւ պատերազմ էր 'ի մէջ աքիայ և 'ի մէջ յերոբովամայ զա̃մ աւուրս կենաց նորա: 7 *Եւ մնացորդք բանից աքիայ՝ և ա̃մ ինչ զոր արար՝ ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն յուդայ: Եւ պատերազմ էր 'ի մէջ աքիայ և 'ի մէջ յերոբովամայ: 8 *Եւ ննջեաց աքիու ընդ հարս իւր. և Թաղեցաւ 'ի քաղաքի դաւթի. Եւ Թագաւորէ ասա որդի նր̃ ընդ նր̃:

Բ.Մնա 13.2. — Բ.Մնա 14.1.

9 * Եւ յամի քսաներորդի յերոբովամայ արքայի Ի̃ղի. Թագաւորէ ասա 'ի վ̃ր յուդայ: 10 *Եւ քառասուն և մի ամ Թագաւորեաց յեէմ. և անուն մօր նր̃ մաաքա՝ դուստր աբեսաղոմայ: 11 *Եւ արար ասա ուղղութի առաջի Տ̃ն իբրև զդաւիթ զհայր իւր: 12 *Եւ եբարձ զնուէրս յերկրէն. և ջնջեաց զա̃մ խորդախութիւն. զոր արարին հարք նորա: 13 *Եւ զմաաքա զմայր իւր 'ի բաց արար 'ի տիկնութէ: քանզի արար ժողովս յանտառին իւրում. և կոտորեաց ասա զամրոցս նորա. և այրեաց հրով 'ի հեղեղատին կեդրոնի: 14 *Սակայն զբարձունսն ոչ եբարձ: բայց սիրտ նր̃ կատարեալ էր ընդ Տ̃ն զա̃մ աւուրս իւր: 15 *Եւ եբեր զսիւնսն հօր իւրոյ. և զսիւնս զիւր եմոյծ 'ի տուն Տ̃ն. արծաթ և ոսկի և անօթս: 16 *Եւ պատերազմ էր 'ի մէջ ասայի և 'ի մէջ բաասայ արքայի Ի̃ղի զա̃մ աւուրս նց̃:

Բ.Մնա 16.1.

17 * Եւ ել բաասա արքայ Ի̃ղի 'ի վ̃ր յուդայ. և շինեաց զռամա. զի մի՛ լիցի մտանել և ելանել ասայի արքայի յուդայ: 18 * Եւ էառ ասա զա̃մ արծաթն և զոսկի գտեալ 'ի գանձս տանն Տ̃ն. և 'ի գանձս տան Թագաւորին. և ետ զայն 'ի ձեռս ծառայից իւրոց. և առաքեաց զնս̃ ասա արքայ առ որդին ադերայ՝ որդւոյ աբեներայիմայ որդւոյ ազայիլի արքայի ասորւոց բնակելոյ 'ի դամասկոս՝ և ասէ: 19 * Ուխտեա՛ ուխտ ընդ իս և ընդ քեզ. և 'ի մէջ հօր իմոյ և հօր քոյ. ահաւասիկ առաքեցի քեզ պատարագ արծաթ և ոսկի. և լո՛յծ զուխտ քո, որ ընդ բաասայ արքայի Ի̃ղի. և գնասցէ յինէն:

Ասոր է ընդիս

20 * Եւ լուաւ որդի ադերայ՝ արքայի ասայի. և առաքեաց զիշխանսն իւր 'ի քաղաքսն Ի̃ղի. և եհար զային. և զդան. և զաբէլ տանն մաաքայ. և զա̃մ զքեներեթ մինչև յա̃մ երկիրն նեփթաղիմայ: 21 *Եւ եղև՝ իբրև լուաւ բաասա. դադարեաց 'ի շինելոյ զռամա. և դարձաւ 'ի Թերսայ: 22 * Եւ արքայ ասա պատուիրեաց ա̃մ յուդայ, որք էին յենակիմ. զի առցեն զքարինսն ռամայ, և զփայտ նր̃, զոր շինեաց բաասա. և շինեաց նոքօք արքայ ասա զա̃մ բլուր բենիամինի՝ և զդիտանոցսն:

23 *Եւ մնացորդք բանից ասայի և ա̃մ զօրութի նորա. և ա̃մ ինչ զոր արար, և քաղաքսն զորս շինեաց. ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն յուդայ: բայց 'ի ժամանակի ծերութե իւրոյ ցաւեցան ոտք իւր: 24 * Եւ ննջեաց ասա ընդ հարս իւր. և Թաղեցաւ ընդ հարս իւր 'ի քաղաքին դաւթի: Եւ Թագաւորէ յովսափատ որդի նր̃ ընդ նր̃:

Բ.Մնա 17.1.

25 * Եւ նաբատ որդի յերոբովամայ Թագաւորէ 'ի վ̃ր Ի̃ղի յամին երկրորդի ասայի արքայի յուդայ: և Թագաւորեաց 'ի վ̃ր Ի̃ղի ամս երկուս: 26 * Եւ արար չար առաջի Տ̃ն. և գնաց զճանապարհ հօր իւրոյ. և 'ի մեղս իւր որովք յանցոյց զԻ̃ղ: 27 * Եւ նստաւ զնովաւ բաասա որդի աքիայ 'ի վերայ տանն իսաքարու. և եհար զնա բաասա 'ի գաբաթոն այլազգեաց: և նաբատ և ա̃մ Ի̃ղ նստէին զգաբաթոնաւ: 28 * Եւ սպան զնա բաասա. յամին յերկրորդի ասայի արքայի յուդայ. և Թագաւորեաց ընդ նորա:

29 * Եւ եղև իբրև Թագաւորեաց. եհար զա̃մ տունն յերոբովամու. և ոչ Թողոյր զա̃մ շնչաւոր տանն յերոբովամայ. մինչև սատակել զնա ըստ բանին Տ̃ն զոր խօսեցաւ 'ի ձեռն ծառայի իւրոյ աքիայ սիլօնացւոյ:

Ս պր. 21.22. — Ս էր. 14.10.

30 * Վասն ա̃մ մեղացն յերոբովամայ. որ մեղաւ. և յանցոյց զԻ̃ղ 'ի զայրացուցանել իւրում. որովք զայրացոյց զՏ̃ր Ա̃Ծ Ի̃ղի: 31 * Եւ մնացորդք բանից նաբատայ. և ա̃մ ինչ զոր արար, ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն Ի̃ղի: 32 * Եւ էր պատերազմ 'ի մէջ ասայի՝ և 'ի մէջ նաբատայ արքայի Ի̃ղի զա̃մ աւուրս նոցա: 33 * Եւ յամին երրորդի ասայի արքայի յուդայ Թագաւորէ բաասա որդի աքիայ

'ի վր̃ ամ̃ Իղի 'ի Թերսայ ամս քսան և չորս ։ 34 * Եւ արար չար առաջի Տն̃ ։ և գնաց զճանապարհ յերոբովամայ որդւոյ Նաբատայ՝ և 'ի մեղս նորա ․ որպէս յանցոյց զԻսրայէլ ։

## ԳԼ․ ԺԵ․

1 Եւ եղև բան Տն̃ 'ի ձեռն յեհուայ որդւոյ անանեայ առ բաասա՝ և ասէ ։ 2 * Փոխանակ զի բարձրացուցի զքեզ յերկրէ․ և ետու զքեզ առաջնորդ 'ի վր̃ ժողովրդեան իմոյ Իղի․ և գնացեր զճանապարհն յերոբովամայ․ և յանցուցեր զժողովուրդ իմ զԻղ̃ բարկացուցանել զիս սնոտիւք իւրեանց ։ 3 * Ահա ես յարուցից զհետ բաասայ և զհետ տանն նորա ․ և տաց զտունս քո իբրև զտունն յերոբովամայ որդւոյ Նաբատայ ։ 4 * Որ մեռանիցի բաասայ 'ի քաղաքի, շունք կերիցեն․ և որ մեռանիցի նր̃ 'ի դաշտի, կերիցեն զնա թռչունք երկնից ։ 5 * Եւ մնացորդք բանից բաասայ․ և զամ̃ ինչ զոր արար․ և զօրութիւնք նր̃․ ոչ ահանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն Իղի ։ 6 * Եւ ննջեաց բաասա ընդ հարս իւր․ և թաղեցաւ 'ի Թերսայ ։ և Թագաւորէ Ելա որդի նորա ընդ նորա ։ (յամի քսաներորդի ասայի արքայի ։) 7 * Եւ 'ի ձեռն յեհուայ որդւոյ անանեայ մարգարէի․ խօսեցաւ Տր̃ 'ի վերայ բաասայ՝ և 'ի վր̃ տան նր̃ ․ զամ̃ չարիսն զոր արար առաջի Տն̃ 'ի բարկացուցանել զնա գործովք ձեռաց իւրոց ․ առ 'ի լինելոյ իբրև զտունն յերոբովամայ ․ և վս̃ հարկանելոյ զնա ։ 8 * Յամին քսաներորդի և վեցերորդի արքայի յուդայ ։ և Թագաւորեաց Ելա որդի բաասայ 'ի վր̃ Իղի 'ի Թերսայ ամս երկուս ։ 9 * Եւ ժողովեաց 'ի վերայ նորա զամբրի ծառայ իւր իշխան կիսոյ սպառազինաց․ և նա ըմպէր ․ և արբեալ էր 'ի տանն արսայ հանդերձապետի 'ի Թերսայ ։ 10 * Եւ եմուտ զամբրի․ և եհար զնա՝ և եսպան․ յամի քսաներորդի եօթներորդի ասայի արքայի յուդայ․ և Թագաւորեաց ընդ նորա ։ 11 * Եւ եղև 'ի Թագաւորել նր̃՝ և նստել յաթոռն իւրում, եհար զամ̃ տունն բաասայ՝ և ոչ եթող նմա՝ որ միզիցէ զորմով ․ և զմերձաւորս նորա՝ և զբարեկամս նորա ։ 12 * Եւ ջնջեաց զամբրի զամ̃ տունն բաասայ՝ ըստ բանին Տն̃՝ զոր խօսեցաւ 'ի վերայ տանն բաասայ 'ի ձեռն յեհուայ մարգարէի ։ 13 * Վս̃ ամ̃ մեղացն բաասայ՝ և Ելայ որդւոյ նր̃՝ որ մեղաւ ։ և ոպ̃ յանցոյցն զԻղ̃ բարկացուցանել զՏր̃ Ած̃ Իղի սնոտեօք իւրեանց ։ 14 * Եւ մնացորդք բանիցն Ելայ․ և զամ̃ ինչ զոր արար․ ոչ ահանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն Իղի ։ 15 * Յամի քսաներորդի եօթներորդի ասայի արքայի յուդայ․ Թագաւորեաց զամբրի աւուրս եօթն 'ի Թերսայ ․ և բանակն Իղի 'ի գաբաթոնի այլազգեաց ։ 16 * Եւ լուաւ ժողովուրդն 'ի բանակի անդ․ ասեն՝ գումարեցաւ զամբրի՝ և եհար զարքայն․ և Թագաւորեցուցին զԱմրի զօրավար զօրուն 'ի վր̃ Իսրայէլի յաւուր յայնմիկ 'ի բանակին ։ 17 * Եւ ել ամրի․ և ամ̃ Իղ̃ ընդ նմա 'ի գաբաթոնէ․ 18 և նստաւ զթերսաւ ։ * Եւ եղև իբրև ետես զամբրի թէ յառնուլ եղև քաղաքն․ եմուտ 'ի սենեակ մի տանն արքայի․ և այրեաց 'ի վերայ նր̃ զտունն արքայի հրով ․ և մեռաւ ։ 19 * Վս̃ մեղացն իւրոց զոր արար առնել չար առաջի Տն̃․ և գնաց զճանապարհս յերոբովամայ որդւոյ Նաբատայ ․ և 'ի մեղս նր̃․ զոր արար՝ 20 որովք յանցոյց զԻղ̃ ։ * Եւ մնացորդք բանից զամբրեայ՝ և խռովք նր̃՝ զոր խռովեցաւ ․ ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն 21 Իղի ։ * Յայնժամ բաժանեցաւ ժողովուրդն Իղի․ կէս ժողովրդեանն լինէր զհետ Թամնեայ որդւոյ գոնաթայ Թագաւորեցուցանել զնա․ և կէս ժողովրդեանն լինէր զկնի ամրեայ ։ 22 * Եւ յաղթահարեաց ժողովուրդն՝ որ զկնի ամրեայ․ և պարտեցաւ ժողովուրդն՝ որ զհետ Թամնեայ որդւոյ գոնաթայ․ և մեռաւ Թամնի․ (և յովրամ եղբայր նորա 'ի ժամանակի յայնմիկ․) և Թագաւորեաց ամրի յետ Թամնեայ ։ 23 * Յամին երեսներորդի և առաջնորդի ասայի արքայի յուդայ․ Թագաւորէ ամրի 'ի վր̃ Իղի ամս երկոտասան․ 'ի Թերսայ Թագաւորեաց ամս վեց ։ 24 * Եւ ստացաւ ամրի զլեառնն սոմորոն 'ի սամերայ տեառնէ լերինն երկուց տաղանդաց արծաթոյ․ և շինեաց զլեառնն․ և կոչեաց զանուն լերինն՝ զոր շինեաց , յանուն սամերեայ տն̃ լերինն սամիրօն ։ 25 * Եւ արար ամրի չար առաջի Տն̃․ և չարացաւ քան զամ̃ 26 եղեալս յառաջ քան զնա ։ * Եւ գնաց զամ̃ ճանապարհս յերոբովամայ որդւոյ Նաբատայ․ և 'ի մեղս նորա․ որովք յանցոյց զԻղ̃ 'ի բարկացուցանել զՏր̃ 27 Ած̃ Իղի սնոտեօք իւրեանց ։ * Եւ մնացորդք բանից ամրեայ՝ և զամ̃ ինչ զոր արար․ և զօրութիւն նր̃ զոր արար․ ոչ ահանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց

Վեր․ 14.11.

Բ․ Մն․ 16.1.

4 Թագ․ 9.31.

աւուրց թագաւորացն Իղի։ * 28 Եւ ննջեաց Ամրի ընդ հարս իւր. և թաղեցաւ ՚ի Սամարիայ. և թագաւորեաց Աքաաբ որդի նորա ընդ նր։ * 29 Եւ Աքաաբ որդի Ամրեայ թագաւորեաց ՚ի վերայ Իղի. յամին երեսներորդի և ութերորդի Ասայի արքայի Յուդայ. թագաւորեաց Աքաաբ որդի Ամրեայ ՚ի վերայ Իղի ՚ի Սամարիայ ամս քսան և երկուս։ * 30 Եւ արար Աքաաբ որդի Ամրեայ չար առաջի Տն քան զամենեսեան. որք յառաջ քան զնա էին։

* 31 Եւ ոչ ինչ էր նմա ընդհատ գնալ ըստ մեղաց Յերոբովամայ որդւոյ Նաբատայ. և էառ կին զՅեզաբէլ դուստր Յեթբաաղայ արքայի Սիդոնացւոց. և գնաց՝ և ծառայեաց Բահաղու՝ և երկիր եպագ նմա։ * 32 Եւ կանգնեաց սեղան Բահաղու ՚ի տան գարշելեաց նր. զոր շինեաց ՚ի Սամարիայ։ * 33 Եւ արար Աքաաբ անտառ. և յաւել Աքաաբ առնել առ ՚ի բարկացուցանել զՏէր Ած Իղի, քան զամ թագաւորս Իղի եղեալս յառաջ քան զնա։ * 34 Յաւուրս նորա շինեաց Աքիէլ Բեթելացի զԵրիքով. աբիրոնաւ անդրանկաւ իւրով եարկ նմա հիմունս. և սեգուբաւ կրտսերով իւրով կանգնեաց զդրունս նր ‖ ըստ բանին Տն. զոր խօսեցաւ ՚ի ձեռն Յեսուայ որդւոյ Նաւեայ։

‖ Յեսու. 6.26.

## ԳԼ. ԺԷ.

1 Եւ ‖ ասէ Եղիա մարգարէ ՚ի Թեզբեայ Գաղաադու Աքաաբու. կենդանի է Տր Ած զօրութեանց Ած Իղի. որոյ կացի առաջի նորա. եթէ եղիցի յամս յայսոսիկ ցօղ՝ կամ՝ անձրև. բայց եթէ բանիւ բերանոյ իմոյ։ * 2 Եւ եղև բան Տն առ Եղիա՝ և ասէ։ * 3 Գնա՛ աստի ընդ արևելս. և թաքիցես ՚ի հեղեղատին Քոռաթու. որ է յանդիման Յորդանանու։ * 4 Եւ եղիցի ըմպել քեզ ջուր ՚ի հեղեղատէն. և հրաման տաց ագռաւուց կերակրել զքեզ անդ։ * 5 Եւ գնաց. և արար Եղիա ըստ բանի Տն։ և չոգաւ՝ և նստաւ ՚ի հեղեղատին Քոռաթայ յանդիման Յորդանանու։ * 6 Եւ ագռաւք բերէին նմա հաց և միս ընդ առաւօտս. և հաց և միս ընդ երեկոյս. և ՚ի հեղեղատէն ըմպէր զջուր։ * 7 Եւ եղև յետ աւուրց. և ցամաքեցաւ հեղեղատն։ * 8 Եւ եղև բան Տն առ Եղիա՝ և ասէ։ * 9 Արի՛ և գնա՛ ՚ի Սարեփթա Սիդոնացւոց. և նստցիս անդ. և ահա պատուիրեալ է իմ անդ կնոջ միոյ այրւոյ կերակրել զքեզ։ * 10 ‖ Եւ յարեաւ՝ և գնաց ՚ի Սարեփթա ՚ի դրունս քաղաքին. և ահա անդ կին մի քաղէր փայտ. և աղաղակեաց զկնի նորա Եղիա՝ և ասէ ցնա. ա՛ռ դու ինձ սակաւ մի ջուր ամանով և արբից։ * 11 Եւ գնաց բերել. և աղաղակեաց զհետ նորա Եղիա՝ և ասէ. առցես ինձ պատառ մի հաց ՚ի ձեռին քում։ * 12 Եւ ասէ կինն. կենդանի է Տր Ած քո. եթէ գուցէ իմ նկանակ. բայց եթէ որչափ բուռն մի ալեւր ՚ի սափորի. և սակաւ մի իւղ ՚ի կամիսակի. և ահա քաղեմ կրկուտս երկուս. և մտից՝ և արարից զայն ինձ և մանկանց իմոց. և կերիցուք զայն՝ և մեռցուք։ * 13 Եւ ասէ ցնա Եղիա. քաջալերեա՛ց. մո՛ւտ՝ և արա՛ ըստ բանի քում. այլ արասցես նախ ինձ անտի նկանակ մի փոքրիկ. և բերցես ինձ. և այս արասցես քեզ և մանկանց քոց։ * 14 Զի այսպէս ասէ Տր Ած Իղի. սափոր ալերն մի՛ պակասեսցի. և կամիսակ իւղոյն մի՛ նուազեսցի մինչև յօր տալոյ Տն անձրև ՚ի վերայ երեսաց երկրի։ * 15 Եւ գնաց կինն. և արար ըստ բանին Եղիայի. և եկեր սա՛ և նա՛ և որդիք նր։ * 16 Եւ յօրէ յայնմանէ սափոր ալերն ոչ պակասեցաւ. և կամիսակ իւղոյն ոչ նուազեցաւ ըստ բանին Տն. զոր խօսեցաւ ՚ի ձեռն Եղիայի։ * 17 Եւ եղև յետ բանիցս այսոցիկ հիւանդացաւ որդի տիկնոջ տանն. և էր ախտ նորա սաստիկ յոյժ. մինչ ոչ մնաց ՚ի նմա շունչ։ * 18 Եւ ասէ ցԵղիա. զի՞ կայ իմ և քո՝ այր Այ. մտեր առ իս յիշատակել զանօրէնութիւնս իմ. և սպանանել զորդի իմ։ * 19 Եւ ասէ Եղիա ցկինն. տո՛ւր ցիս զորդիդ քո։ և էառ զնա ՚ի գրկաց նր. և եհան զնա ՚ի վերնատունն յորում ինքն նստէր. և արար զնա ՚ի կողմն ՚ի վր մահճաց իւրոց։ * 20 Եւ աղաղակեաց Եղիա՝ և ասէ. ո՛հ ինձ Տր. որ վկայդ ես այրւոյն, առ որում ես բնակիմ. դու չարչարեցեր զորդի նորա մեռուցանել։ * 21 Եւ փչեաց երիցս ՚ի մանուկն. և կարդաց զՏր՝ և ասէ. Տր Ած իմ. դարձցի շունչ մանկանս ՚ի սա. և եղև այնպէս։ * 22 Եւ աղաղակեաց. և լուաւ Տր ձայնի Եղիայի. և դարձաւ շունչ մանկանն ՚ի փոր նր՝ և կենդանացաւ։ * 23 Եւ էառ Եղիա զմանուկն՝ և իջոյց զնա ՚ի վերնատանէ անտի ՚ի տունն. և ետ ցմայր իւր. և ասէ Եղիա. տե՛ս՝ զի կենդանի է որդիդ քո։ * 24 Եւ ասէ կինն ցԵղիա. ահա արդ գիտացի, եթէ այր Այ ես դու. և բան Տն ճշմարիտ է ՚ի բերան քո։

‖ Սիրաք. 48.1. Յակոբ. 5.17.

‖ Ղուկ. 4.26.

## ԳԼ: ԺԸ:

1 Եւ եղեւ յետ աւուրց բազմաց. եւ բան Տն եղեւ առ Եղիա յամին երրորդի, եւ ասէ. Երթ՝ եւ երեւեաց աքաաբու. եւ տաց անձրեւ ՚ի վր երեսաց երկրի: *2 Եւ չոգաւ Եղիա երեւիլ աքաաբու: եւ սով սաստիկ էր ՚ի սամարիա: *3 Եւ կոչեաց աքաաբ զաբդիու զհազարապետ իւր. եւ աբդիու երկիւղած էր ՚ի Տէ յոյժ: *4 Եւ եղեւ ՚ի կոտորել յեզաբելայ զմարգարէսն Տն. եւ էառ աբդիու հարիւր այր մարգարէ. եւ թաքոյց զնս յիսուն յիսուն յայրի՝ եւ կերակրեաց զնս հացիւ եւ ջրով: *5 Եւ ասէ աքաբ ցաբդիու. եկ՝ շրջեսցուք ընդ երկիրդ առ ամ աղբերս ջրոց՝ եւ առ հեղեղատօք. թերեւս գտցուք խոտ. եւ ապրեցուսցուք զձիս եւ զջորիս. եւ ոչ սատակեսցին յանասնոց: *6 Եւ բաժանեաց իւրեանց զճանապարհն շրջիլ: եւ աքաաբ գնաց ընդ մի ճանապարհ միայն. եւ աբդիու գնաց ընդ այլ ճանապարհ միայն: *7 Եւ էր աբդիու ՚ի ճանապարհին. եւ եկն ել Եղիա ընդառաջ նորա միայն: եւ աճապարեաց աբդիու. անկաւ ՚ի վր երեսաց իւրոց՝ եւ ասէ. եթէ դու իցես տէր իմ Եղիա: *8 Եւ ասէ Եղիա. ես եմ: երթ՝ եւ ասա ցտէր քո՝ թէ ահաւասիկ Եղիա: *9 Եւ ասէ աբդիու: զի՞նչ մեղայ. զի մատնես զծառայ քո ՚ի ձեռս աքաաբու սպանանել զիս: *10 Կենդանի է Տր Ած քո. եթէ իցէ ազգ. կամ թագաւորութի. ուր ոչ առաքեաց տէր իմ խնդրել զքեզ. եւ ասէին՝ թէ չէ ուրեք: եւ այրեաց զթագաւորութին՝ եւ զաշխարհ նորա. զի ոչ եգիտ զքեզ: *11 Եւ արդ դու ասես. թէ երթ՝ եւ պատմեա՛ տեառն քում, թէ ահաւասիկ Եղիա: *12 Եւ եղիցի՝ թէ ես երթայցեմ ՚ի քէն. եւ հոգի Տն առնուցու զքեզ յերկիր, զոր ոչ գիտիցեմ. եւ մտանիցեմ պատմել աքաաբու, եւ ոչ գտանիցէ զքեզ. եւ սպանանիցէ զիս: եւ ծառայ քո երկիւղած է ՚ի Տէ ՚ի մանկութէ իւրմէ: *13 Եւ ո՞չ պատմեցաւ տեառն իմում. զորինչ արարի ես ՚ի կոտորել յեզաբելայ զմարգարէսն Տն: թաքուցի ՚ի մարգարէիցն Տն հարիւր այր. յիսուն յիսուն այր՝ յայրի. եւ կերակրեցի զնս հացիւ եւ ջրով: *14 Եւ արդ դու ասես ցիս. երթ՝ եւ ասա՛ տեառն քում թէ ահաւասիկ Եղիա. եւ սպանանիցէ զիս: *15 Եւ ասէ Եղիա. կենդանի է Տր զօրութեց. որոյ կացի առաջի նորա. զի այսօր երեւեցայց նմա: *16 Եւ գնաց աբդիու ընդ առաջ աքաաբու՝ եւ պատմեաց նմա: եւ ընթացաւ աքաաբ՝ եւ գնաց ընդ առաջ Եղիայի: *17 Եւ եղեւ իբրեւ ետես աքաաբ զԵղիա. ասէ աքաաբ ցԵղիա. եթէ դու իցես խանգարիչն իսրայէլի: *18 Եւ ասէ Եղիա. ես ո՛չ խանգարեմ զիէլ, այլ դու եւ տուն հօր քո. ՚ի թողուլ ձեր զՏր Ած ձեր՝ եւ երթալ զհետ բահաղիմայցն: *19 Եւ արդ առաքեա՛. եւ ժողովեա՛ առ իս զամ իէլ ՚ի լեառն կարմելոս՝ եւ զմարգարէսն բահաղու զչորեքհարիւր եւ զյիսուն՝ (զմարգարէսն ամօթոյ զչորեքհարիւր եւ զյիսուն.) եւ զմարգարէսն անտառաց զչորեքհարիւր. որք ուտեն զսեղանն յեզաբելայ: *20 Եւ առաքեաց աքաաբ ընդ ամ իսրայէլ. եւ ժողովեաց զմարգարէսն ՚ի լեառնն կարմելոս: *21 Եւ մերձեցոյց Եղիա զամ ժողովուրդն. եւ ասէ ցնս Եղիա. մինչեւ ցե՞րբ կաղայք յերկուս հետս: եթէ Տր է Ած, երթա՛յք զհետ նորա. եւ եթէ բահաղն իցէ, երթա՛յք զհետ նր: եւ ո՛չ ետ ժողովուրդն նմա պատասխանի: *22 Եւ ասէ Եղիա ցժողովուրդն. ես մնացեալ եմ մարգարէ Տն միայն. եւ մարգարէք բահաղու արք չորեքհարիւր եւ յիսուն. եւ մարգարէք անտառին՝ չորեքհարիւր: *23 Տացեն մեզ երկուս եզինս. եւ ընտրեսցեն իւրեանց զմին. եւ յօշեսցեն՝ եւ դիցեն ՚ի վր փայտից. եւ հուր մի դիցեն: եւ ես արարից զմիւս եզն. եւ եդից ՚ի վր փայտից՝ եւ հուր ո՛չ մատուցից: *24 Եւ կարդասջի՛ք զանուն աստուծոյն ձերոյ: եւ ես կոչեցից զանուն Տն Այ իմոյ. եւ եղիցի Ած որ լուիցէ հրով՝ նա է Ած: պատասխանի ետուն ամ ժողովուրդն՝ եւ ասեն. բարի բանդ՝ զոր խօսեցար: *25 Եւ ասէ Եղիա ցմարգարէսն ամօթոյ: ընտրեցէ՛ք դուք ձեզ զուարակ մի. եւ արարէ՛ք յառաջագոյն. քանզի դուք բազումք էք: եւ կարդացէ՛ք զանուն աստուծոյ ձերոյ. եւ հուր մի՛ դնէք ՚ի վր: *26 Եւ առին զզուարակն՝ զոր ետ նց. եւ արարին. եւ կոչէին զանուն բահաղու յայգուէ մինչեւ ցհասարակ օր. եւ ասէին. լո՛ւր մեզ բահաղ՝ լո՛ւր մեզ: եւ ո՛չ գոյր բարբառ՝ եւ ոչ ունկնդրութի: եւ ընթանային շուրջ զսեղանովն՝ զոր արարին: *27 Եւ եղեւ ՚ի միջօրէին՝ եւ այպանեաց զնոսա Եղիա թեզբացի՝ եւ ասէ. մեծաձայն կարդացէ՛ք. զի ած է. թերեւս զբօսանս ինչ իցեն նմա. եւ միանգամայն թերեւս առնիցէ հրաման. կամ թէ ՚ի քուն իցէ՝ եւ յառնիցէ: *28 Եւ կարդային մեծաձայն. եւ ցատէին ըստ օրինի իւրեանց. սրով եւ գեղար-

դեամբք

դեամբք՝ մինչև ցհեղուլ արեան 'ի վերայ
նոցա։ * Եւ եղև իբրև մերձեցաւ յընդ 29
երեկս. և մարգարէանային մինչև
ցժամանակ մատուցանելոյ զոհին. և
ոչ գոյր ձայն։ (և խօսեցաւ եղիա թեզ
բացի ընդ մարգարէսն գարշելեացն՝
և ասէ. 'ի բացկացէք. արդ ես արա
րից զողջակէզն իմ։ և 'ի բաց կացին՝
և գնացին։) * Եւ ասէ եղիա ցժողո 30
վուրդն՝ մատերուք առ իս. և մատեան
ամ ժողովուրդն առ նա. և ողջացոյց
զսեղանն Տեառն, զկործանեալ։ * Եւ 31
էառ եղիա երկոտասան քար՝ ըստ թուոյ
ցեղիցն իէլի. որպէս խօսեցաւ Տէր ընդ նմա
|| և ասէ՝ իէլ եղիցի անուն քո։ * Եւ 32
շինեաց զքարինսն յանուն Տեառն. և ա
րար ծով՝ որ տանէր երկուց գրուանց
սերմն շուրջ զսեղանովն։ * Եւ եդեղ 33
զշերտսն 'ի վերայ սեղանոյն՝ զոր ա
րար։ և յօշեաց զողջակէզն. և եդեղ 'ի
վերայ շերտիցն. և եդեղ 'ի վերայ սեղանոյն։
* Եւ ասէ. առէք ինձ չորս սափորս 34
ջրոյ. և հեղէք 'ի վերայ ողջակիզին՝
և 'ի վերայ շերտիցդ։ և ասէ. կրկնեցէք.
և կրկնեցին։ և ասէ. երեքկնեցէք. և
երեքկնեցին։ * Եւ գնայր ջուրն շուրջ 35
զսեղանովն. և զծովն լցին ջրով։ * Եւ 36
եղև 'ի ժամու մատուցանելոյ պատա
րագին, աղաղակեաց եղիա յերկինս՝
և ասէ. Տէր Ած աբրահամու՝ և իսա
հակայ՝ և իէլի. այսօր ծանիցեն եթէ
դու ես Տէր Ած իէլի. և ես ծառայ քո.
և ես արարի զգործս զայսոսիկ։
* Լուր ինձ Տէր. լուր ինձ հրով. և ծա 37
նիցէ ժողովուրդս՝ թէ դու ես Տէր
Ած. և դու դարձուցեր զսիրտ ժողո
վրդեանս այսորիկ յետս։ * Եւ անկաւ 38
հուր յերկնից. և եկեր զողջակէզն՝ և
զշերտսն. և զհողն՝ և զջուրն՝ որ 'ի ծո
վուն՝ լափեաց հուրն։ * Իբրև ետես 39
ամ ժողովուրդն, անկան 'ի վերայ ե
րեսաց իւրեանց՝ և ասեն. արդարև
Տէր՝ նա է Ած. Տէր նա է Ած։ * Եւ 40
ասէ եղիա ցժողովուրդն. կալարուք
զմարգարէսն բահաղու. և մի՛ ոք ապ
րեսցի 'ի նոցանէ։ և կալան զնոսա. և
իջոյց զնոսա եղիա 'ի հեղեղատն կի
սոնի՝ և կոտորեաց զնոսա անդ։ * Եւ ասէ 41
եղիա ցաքաաբ. ե՛լ կե՛ր՝ և արբ. զի
ոտնաձայն անձրևի է։ * Եւ ել աքաաբ 42
ուտել և ըմպել։ և եղիա ել 'ի գլուխ
լերինն կարմելայ. և խոնարհեցաւ յեր
կիր. և եդ զերեսս իւր 'ի մէջ ծնգաց
իւրոց։ * Եւ ասէ ցպատանեակն իւր. 43
ե՛լ և հայեա՛ց ընդ ճանապարհ ծո
վու։ և ել՝ և հայեցաւ պատանեակն.
և ասէ՝ ո՛չ ինչ է։ և ասէ եղիա. ա՛յլ է՝
դու դարձիր եօթն անգամ։ և դար_

Ծննդ. 32. 28.
4 թագ. 17. 34.

ձաւ պատանեակն եօթն անգամ։
44 * Եւ եղև յետ եօթներորդումն դառնա
լին, և ահա ամպ մի փոքրիկ իբրև
զթաթ առն՝ հանէր ջուր։ և ասէ՝ ե՛լ
և ասա՛ ցաքաաբ. լծեա՛ զկառս քո՝ և
էջ. գուցէ հասանիցի քեզ անձրև։
45 * Եւ եղև մինչ նա այսր՝ և անդր դառ
նայր՝ երկինք մթացան ամպովք և
հողմով. և եղև անձրև մեծ։ և լայր՝
46 և երթայր աքաաբ յեզրայէլ։ * Եւ
ձեռն Տեառն եղև 'ի վերայ եղիայի. և պն
դեաց զմէջ իւր՝ և ընթացաւ առաջի
աքաաբու մինչև մտանել յեզրայէլ։

## Գլ. ԺԹ.

1 Եւ պատմեաց աքաաբ յեզաբելայ
կնոջ իւրում զամենայն, զոր արար ե
ղիա. և որպէս կոտորեաց զամ մարգա
2 րէսն սրով։ * Եւ առաքեաց յեզաբէլ
հրեշտակս առ եղիա՝ և ասէ. եթէ
դու եղիա իցես՝ և ես յեզաբէլ. օ՛ն և
օ՛ն արասցեն ինձ աստուածքն՝ և օ՛ն և
օ՛ն յաւելցեն. եթէ ոչ վաղիւ 'ի սոյն
ժամու եդից զանձն քո իբրև զանձն
3 միոյ 'ի նոցանէ։ * Եւ երկեաւ եղիա՝
և յարեաւ՝ գնայ առանձինն. և եկն
'ի բերսաբէէ յերկիրն յուդայ. և ե
4 թող անդ զպատանեակն իւր։ * Եւ
ինքն գնայ յանապատ աւուր միոյ ճա
նապարհ. և չոգաւ՝ և նստաւ ընդ
բևեկնեաւ. և խնդրեաց մահ անձին
իւրոյ. և ասէ։ շա՛տ է արդ. ա՛ռ զոգի
իմ յինէն Տէր. զի ո՛չ եմ ես լաւ քան
5 զհարս իմ։ * Եւ 'ի քուն եմուտ՝ և
ննջեաց ընդ տնկովն՝ և ահա ոմն մեր
ձեցաւ 'ի նա՝ և ասէ. արի՛ և կե՛ր։
6 * Եւ հայեցաւ եղիա. և ահա 'ի սնա
րից նորա նկանակ հաճարոյ՝ և կուժ
ջրոյ. և յարեաւ՝ եկեր՝ և էարբ. և դար
7 ձեալ ննջեաց։ * Եւ դարձաւ հրեշ
տակն Տեառն երկրորդ անգամ. մերձեցաւ
առ նա՝ և ասէ ցնա. արի՛ կե՛ր. զի բա
զում է 'ի քէն և անդր ճանապարհդ։
8 * Եւ յարեաւ՝ եկեր՝ և էարբ. և գնաց
զօրութեամբ կերակրոյն այնորիկ զքառա
սուն տիւ՝ և զքառասուն գիշեր. մինչև
9 չև ցլեառնն Աստուծոյ 'ի քորէբ։ * Եւ ե
մուտ անդ յայրն՝ և դադարեաց։ և
ահա բան Տեառն եղև առ նա՝ և ասէ. զի՞
10 ես դու աստ եղիա։ * Եւ ասէ՝ եղիա.
նախանձեցայ զնախանձ Տեառն ամենա
կալի. || զի թողին զքեզ որդիքն իէլի. || Հռով. 11. 3.
զսեղանս քո կործանեցին. և զմարգա
րէսս քո կոտորեցին սրով. և միայն մնա
ցեալ եմ. և խնդրեն զանձն իմ առ
11 նուլ զնա։ * Եւ ասէ. ելցես դու վա
ղիւ՝ և կացցես 'ի լերին առաջի
Տեառն. և ահա Տէր անցցէ. և հողմ մեծ
յուժ_

յուժգին՝ որ զլերինս քակիցէ եւ զվէմս խորտակիցէ առաջի Տն. եւ ոչ 'ի հողմին Տր: եւ յետ հողմոյն շարժումն՝ եւ ոչ 'ի շարժմանն Տր: 12 * Եւ յետ շարժմանն հուր՝ եւ ոչ 'ի հուրն Տր. եւ յետ հրոյն ձայն մեղմոյ օդոյ: 13 * Եւ եղեւ իբրեւ լուաւ եղիա, ծածկեաց զերեսս իւր մաշկեկաւն. եւ ել՝ եւ եկաց 'ի ներքոյ այրին. եւ ահա բարբառ առ նա՝ եւ ասէ. զի՞ ես դու աստ եղիա: 14 * Եւ ասէ եղիա. նախանձեցայ զնախանձ Տն ամենակալի. զի թողին զուխտ քո որդիքն Իղի. զսեղանս քո քակեցին. եւ զմարգարէս քո կոտորեցին սրով: ես միայն մնացեալ եմ. եւ խնդրեն զանձն իմ առնուլ զնա: 15 * Եւ ասէ ցնա Տր. գնա՛ եւ դարձիր զճանապարհ քո. եւ երթիցես զճանապարհ անապատին դամասկեայ. եւ երթիցես՝ եւ օծցես զազայէլ 'ի թագաւոր ասորւոց: 16 * Եւ զյէու որդին ամեսսեայ 'ի թագաւոր 'ի վերայ Իղի. եւ զեղիսէէ որդի սափատայ յաբելմայուլայ՝ օծցես 'ի մարգարէ փոխանակ քո: 17 * Եւ եղիցի զապրեալն 'ի սրոյ ազայելի՝ սպանցէ յէու: եւ զապրեալն 'ի սրոյ յէուայ՝ սպանցէ եղիսէէ. 18 * Եւ թողից ինձ յԻղէ եօթնհազար արանց. զամ որոց ոչ իցէ կրկնեալ ծունր բահաղու. եւ զամ բերան՝ որոյ ոչ իցէ պագեալ զնա: 19 * Եւ գնաց անտի. եւ եգիտ զեղիսէէ որդի սափատայ. եւ նա՝ վարէր երկոտասան եզամբք. եւ զոյգք զոյգք եզանց առաջի նր. եւ ինքն 'ի վերայ երկոտասանիցն. եւ եհաս եղիա առ նա. եւ ընկէց զմաշկեակն իւր 'ի վր նր: 20 * Եւ եթող եղիսէէ զեզինսն. եւ ընթացաւ զհետ եղիայի: եւ ասէ՝ համբուրեցից զհայր իմ, եւ զմայր իմ, եւ եկից զկնի քո: եւ ասէ ցնա: երթ՝ դարձիր անդրէն. զի՞նչ արարի քեզ: 21 * Եւ դարձաւ 'ի նմանէ. եւ էառ զզոյգս զոյգս եզանցն. եւ եզեն. եւ գործեօք եզանցն հասոյց զնոսա: եւ ետ ժողովրդեանն, եւ կերին. եւ յարեաւ եւ գնաց զհետ եղիայի. եւ պաշտէր զնա:

Հռոմ. 11. 3.
Սիրաք. 48. 8.
4 Թագ. 9. 7.
Հռոմ. 11. 4.
Չէ զինչ եւէր ա- րարի քեզ

## ԳԼ. Ի.

Եւ որդի ադերայ, արքայ ասորւոց ժողովեաց զամ զօրս իւր. եւ ել. եւ նստաւ զսամարեաւ. եւ երեսուն եւ երկու թագաւորք ընդ նմա. եւ ամ երի վարք եւ կառք. ելին՝ եւ նստան զսամարեաւ. եւ տային պատերազմ ընդ նմա: 2 * Եւ առաքեաց հրեշտակս առ աքաաբ արքայ Իղի 'ի քաղաքն: 3 * Եւ ասէ ցնա՝ այսպէս ասէ որդի ադերայ. արծաթ քո՝ եւ ոսկի քո իմ է. եւ կանայք քո՝ եւ որդիք քո գեղեցիկք՝ իմ են: 4 * Պատասխանի ետ արքայն Իղի՝ եւ ասէ. որպէս խօսեցար տէր իմ արքայ. քո եմ ես. եւ ամ ինչ իմ: 5 * Եւ դարձան հրեշտակքն՝ եւ ասեն. այսպէս ասէ որդի ադերայ. ես յղեցի, զի զարծաթ քո՝ եւ զոսկի քո՝ եւ զկանայս քո ցիս տացես. 6 * Զի վաղիւ 'ի սոյն ժամու առաքեցից զծառայս իմ. եւ յուզեսցեն զտուն քո. եւ զտունս ծառայից քոց՝ եւ եղիցին ցանկալիք աչաց նց. յոր արկանիցեն զձեռս իւրեանց՝ առցեն: 7 * Եւ կոչեաց արքայն Իղի զամ ծերակոյտ երկրին՝ եւ ասէ. գիտասջիք՝ եւ տեսջիք՝ զի չարիս իմն խնդրէ նա. զի առաքեաց առ իս զկանայս իմոց եւ զդստերաց իմոց. զարծաթ իմ, եւ զոսկի իմ ոչ արգելի 'ի նմանէ: 8 * Եւ ասեն ցնա ծերքն՝ եւ ամ ժողովուրդն. մի լսեր. եւ մի յանձն առնուր: 9 * Եւ ասէ ցհրեշտակս որդւոյն ադերայ. ասասջիք ցտրն ձեր ցարքայ. զամ ինչ՝ զոր առաքեցեր առ ծառայ քո յառաջնում նուագին, արարից. բայց զայդ բան ոչ կարեմ առնել: եւ գնացին արքն՝ եւ դարձուցին նմա պատասխանի: 10 * Եւ առաքեաց առ նա որդին ադերայ՝ եւ ասէ. ձնեձն արասցեն ինձ դիքն. եւ ձնեձն յաւելցեն. եթէ բաւեսցէ հող սամարեայ աղխամալք հանդերձ ամ զօրականի հետեւակաց իմոց: 11 * Եւ պատասխանի ետ արքայն Իղի՝ եւ ասէ. շատ է արդ. մի պարծեսցի կորն իբրեւ զուղիղն: 12 * Եւ եղեւ իբրեւ պատասխանի ետ նմա զբանս զայս. եւ ինքն 'ի գինուջ էր. եւ ամ թագաւորք որք ընդ նմա 'ի խորանս. եւ ասէ ցծառայս իւր. շինեցէք պատնէշ. եւ եդին պատնէշ 13 շուրջ զքաղաքաւն: * Եւ ահա մարգարէ մի մատեաւ առ աքաաբ արքայ Իղի՝ եւ ասէ. այսպէս ասէ Տր: եթէ տեսանիցես զայն ամբոխ մեծ. ահա ես մատնեցից զնա այսօր 'ի ձեռս քո. 14 գիտասցես՝ թէ ես եմ Տէր: * Եւ ասէ աքաաբ. իւ: եւ ասէ. այսպէս ասէ Տր. մանկտւով իշխանաց գաւառաց: եւ ասէ աքաաբ. ո՞ նախ դրդուեսցէ զպատերազմն. եւ ասէ. դու: 15 * Եւ հանդէս արար ծառայից իշխանաց գաւառաց. եւ եղեն երկերիւր եւ երեսուն. եւ ապա հանդէս արար ամ ժողովրդեանն. եւ ամ որդւոց զօրութե եօթն հազար 16 արանց: * Եւ ելանէր զմիջօրէիւ. եւ որդին ադերայ ընդ գինի մտեալ էր. եւ արբեալ 'ի սոկքոյ. ինքն եւ երեսուն եւ երկու թագաւորքն օգնականք նորա: 17 * Եւ ելին նախ մանկունք իշխանաց գաւառացն. եւ առաքեցին առ

որդին

որդիքն ադերայ. և պատմեցին նմա՝ և ասեն. արք ելին 'ի սամարեայ ։ 18 * Եւ ասէ ցնս. եթէ 'ի խաղաղութիւն ելանիցեն, կալջի՛ք զնոսա կենդանիս. և եթէ 'ի պատերազմ ելանիցեն, կալջի՛ք զնս կենդանիս ։ 19 * Եւ ելին 'ի քաղաքէն մանկտի իշխանաց գաւառացն. և զօրն զկնի նոցա ։ 20 * Եւ եհար իւրաքանչիւրոք զորում դիպեցաւ. և փախեան ասորիքն. և հալածեաց զնոսա Իէլ. և ապրեցաւ որդին ադերայ արքայ ասորւոց հեծեալ ձիով՝ հանդերձ երիւք ոմամբք հեծելովք ։ 21 * Եւ ել արքայն իսրայէլի. և էառ զերիվարս և զկառս. և եհար յասորւոց հարուածս մեծամեծս ։ 22 * Եւ մատեաւ մարգարէն առ արքայ Իէլի. և ասէ ցնա. զօրացի՛ր. և գիտեա՛. և տե՛ս զինչ գործեսցես. զի 'ի դարձի տարւոյս այսորիկ որդի ադերայ արքայ ասորւոց ելանելոց է 'ի վերայ քո ։ 23 * Եւ ծառայք արքային ասորւոց ասեն ցնա. Ած լեռանց է Ածն Իէլի. և ոչ Ած դաշտաց. վասն այնորիկ յաղթահարեցին զմեզ. եթէ տայցեմք ընդ նս պատերազմ 'ի դիւրի՝ յաղթեմք նոցա ։ 24 * Եւ զայս բան արասցես. 'ի բաց արա զթագաւորսն յիւրաքանչիւր տեղւոջէ. և դի՛ր ընդ նոցա նախարարս ։ 25 * Եւ փոխանակեսցուք քեզ զօրս ընդ զօրսն՝ որք անկան 'ի քէն. և երիվարս ընդ երիվարացն. և կառս ընդ կառացն. և տացուք ընդ նոսա պատերազմ 'ի դիւրի՝ և յաղթեսցուք նոցա. և անսաց բարբառոյ նոցա. և արար այնպէս ։

26 * Եւ եղև 'ի դառնալ տարւոյն. համդէս արար որդին ադերայ՝ ասորւոց. և ել յափեկայ 'ի պատերազմ ընդ Իէլի ։ ընդդէմ 27 * Եւ որդիքն Իէլի արարին հանդէս՝ և երկգնդեցան. և հասին յառաջս նց. և Ճակատեցան որդիքն Իէլի ընդդէմ ասորւոցն. իբրև երկու երամակք այծից. և ասորիքն լցին զերկիրն ։ 28 * Եւ մատեաւ այրն Այ՝ և ասէ ցարքայն Իէլի՝ այսպէս ասէ Տր. փոխանակ զի ասացին ասորիքն թէ Ած լերանց է՝ Տր Ած Իէլի՝ և ոչ Ած դաշտաց. նա տացէ զզօրն զայն զմեծ 'ի ձեռս քո. և գիտասցես թէ ես եմ Տր ։ 29 * Եւ բանակեցան նոքա ընդդէմ սոցա զեօթն օր. և եղև յաւուրն եօթներորդի ընդխառնեցաւ պատերազմն. և եհար Իէլ յասորւոցն հարիւրհազար հետևակաց 'ի միում աւուր ։ 30 * Եւ մնացեալքն փախեան յափեկայ 'ի քաղաքն իւրեանց. և անկաւ պարիսպն 'ի վր քսան և եօթնհազար արանց մնացելոց. և որդին ադերայ փախեաւ՝ և եմուտ 'ի տուն իւր սենեակ 'ի սենեկէ ։ 31 * Եւ ասեն ցնա ծառայքն իւր. ահաւասիկ գիտեմք՝ զի թագաւորք տանն Իէլի թագաւորք ողորմութեան են. արկցուք քուրձս զմիջովք. և չուանս 'ի գլուխս մեր. և ելցուք առ արքայն Իէլի. թերևս ապրեցուսցէ զանձինս մեր ։

32 * Եւ զգեցան քուրձս 'ի մէջս իւրեանց. և եդին չուանս 'ի գլուխս իւրեանց. և ասեն ցարքայն Իէլի. ծառայքո որդի ադերայ ասէ, կեցցէ անձն իմ ։ և ասէ. եթէ տակաւին կենդանի իցէ, եղբայր իմ է ։ 33 * Եւ արքն հմայեցին՝ և նուիրեցին՝ և քաղեցին զբանն 'ի բերանոյ նորա. և ասեն՝ եղբայր քո որդի ադերայ աստ է. և ասէ. մտէ՛ք՝ և ածէ՛ք զնա. և ել առ նա որդին ադերայ. և հանին զնա առ նա 'ի կառսն ։ 34 * Եւ ասէ ցնա. զքաղաքսն զոր էառ հայր իմ 'ի հօրէ քումմէ՝ դարձուցից առ քեզ. և հանցես քեզ հարկս 'ի դամասկոս. որպէս եդ հայր իմ 'ի սամարիայ. և ասէ. և ես արձակեցից զքեզ ուխտիւ. և եդ ընդ նմա ուխտ. և արձակեաց զնա ։ 35 * Եւ այր մի յորդւոց մարգարէիցն ասէ ցընկեր իւր բանիւ Տն՝ հա՛ր զիս. և ոչ կամեցաւ այրն հարկանել զնա ։ 36 * Եւ ասէ ցնա. փոխանակ զի ոչ լուար ձայնի Տն. ահա իբրև գնասցես յինէն՝ սպանցէ զքեզ առիւծ ։ և իբրև գնաց 'ի նմանէ, եգիտ զնա առիւծ՝ և սպան զնա ։ 37 * Եւ եգիտ այլ այր՝ և ասէ՝ հա՛ր զիս ։ և եհար զնա այրն՝ եհար, և ջախջախեաց ։ 38 * Եւ չոգաւ մարգարէն՝ և եկաց առաջի արքային 'ի վերայ Ճանապարհին. և կապեաց պատանաւ զաչս իւր ։ 39 * Եւ եղև իբրև անցանէր ընդ այն արքայ. և նա աղաղակեաց առ արքայ՝ և ասէ. ծառայ քո ել ընդ զօրու 'ի պատերազմի. և ահա այր մի էած առ իս այր. և ասէ՝ պահեա՛ զայրդ զայդ՝ ապա եթէ զերծանելով զերծցի. եղիցի անձն քո ընդ անձին դորա. կամ տաղանդ մի արծաթոյ կշռեսցես ։ 40 * Եւ եղև՝ մինչ ծառայ քո այսր և անդր հայէր. և նա չէր ուրեք. և ասէ արքայն իսրայէլի ցնա. ահա և այդ յինէն կողմանէ դատ է. սպաներ ուրեմն ։ 41 * Եւ փութացաւ՝ 'ի բաց էառ զպատանն յաչաց իւրոց. և ծանեաւ զնա արքայն իսրայէլի՝ թէ 'ի մարգարէից անտի է ։ 42 * Եւ ասէ ցնա. այսպէս ասէ Տէր՝ ‖ փոխանակ զի հաներ դու զայրն վնասակար 'ի ձեռաց իմոց ‖. եղիցի անձն քո փոխանակ անձին նորա. և ժողովուրդ քո փոխանակ ժողովրդեան նորա ։ 43 * Եւ գնաց արքայն իսրայէլի 'ի

Ա այր. 22. 38.

տունն

տունն իւր տխրեալ՝ և լքեալ. և եկն ՚ի Սամարիա:

## ԳԼ: Ի.

1 Եւ եղև յետ բանիցս այսոցիկ. այգի մի էր Նաբովթայ յեզրայելացւոյ. մերձ առ արքունիս կալ Աքաաբու արքայի Սամարիայ: 2 *Եւ խօսեցաւ արքայ ընդ Նաբովթայ՝ և ասէ. տուր ինձ զայգին քո. և եղիցի ինձ ՚ի պարտէզ բանջարոյ, զի մերձ է ՚ի տուն իմ. և տաց քեզ այլ այգի լաւ քան զնա. և եթէ հաճոյ իցէ առաջի քո, տաց քեզ արծաթ գինս այգւոյն քոյ. (և եղիցի ինձ ՚ի պարտէզ բանջարոյ:) 3 *Եւ ասէ Նաբովթ ցարքայ. քաւ լիցի ինձ ՚ի Տէ իմմէ տալ քեզ զժառանգութիւն հարց իմոց: 4 *Եւ եկն Աքաաբ ՚ի տուն իւր տխրեալ՝ և լքեալ. վն բանին զոր խօսեցաւ ընդ նմա Նաբօթ յեզրայելացի. և ասէ՝ ոչ տաց քեզ զժառանգութիւն հարց իմոց: և ննջեաց ՚ի մահիճս իւր. և ծածկեաց զերեսս իւր. և ոչ եկեր հաց: 5 *Եւ եմուտ առ նա Յեզաբէլ կին իւր՝ և խօսեցաւ ընդ նմա. և ասէ. զի՞ խռովեալ է ոգի քո՝ և ոչ ուտես զհաց: 6 *Եւ ասէ ցնա. զի խօսեցայ ընդ Նաբովթայ յեզրայելացւոյ՝ և ասեմ. տուր ինձ զայգին քո ընդ արծաթոյ. և եթէ կամիս՝ տաց քեզ այլ այգի փոխանակ նր. և ասէ. ոչ տաց քեզ զժառանգութիւն հարց իմոց: 7 *Եւ ասէ ցնա Յեզաբէլ կին իւր. արդ՝ այդպէս առնիցես զթագաւորութիւդ ՚ի վերայ Իէլի. արի, կեր հաց՝ և սթափեաց. և ես տաց քեզ զայգին Նաբովթայ յեզրայելացւոյ: 8 *Եւ գրեաց հրովարտակ յանուն Աքաաբու. և կնքեաց մատանեաւ նր. և առաքեաց զհրովարտակն առ ծերս՝ և առ ազատս քաղաքին նր. որք բնակեալ էին ընդ Նաբովթայ: 9 *Եւ գրեալ էր ՚ի հրովարտակին այսպէս. պահեցէք պահս. և նստուցէք զՆաբովթ ՚ի գլուխ ժողովրդեանն: 10 *Եւ նստուցէք երկուս արս՝ որդիս անօրինաց հանդէպ նորա. և վկայեսցեն զնմանէ և ասասցեն. թէ օրհնեցեր զԱծ և զարքայ. և հանցեն զնա՝ և քարկոծեսցեն. և մեռցի: 11 *Եւ արարին արք քաղաքին նր ծերք՝ և ազատք, որք նստէին ՚ի քաղաքին նորա՝ որպ առաքեաց առ նոսա Յեզաբէլ. զորօրինակ գրեալ էր ՚ի հրովարտակն: 12 *Կարդացին պահս. և նստուցին զՆաբովթ ՚ի գլուխ ժողովրդեանն: 13 *Եւ եկին երկու արք՝ որդիք անօրինաց. և նստան հանդէպ նորա. և վկայեցին արքն ապստամբութեն զՆաբովթայ առաջի ամ ժողովրդեանն՝ և ասեն, թէ օրհնեաց Նաբովթ զԱծ՝ և զարքայ. և հանին զնա արտաքոյ քաղաքին. և քարկոծեցին զնա քարամբք՝ և մեռաւ: 14 *Եւ առաքեցին առ Յեզաբէլ՝ և ասեն. քարկոծեցաւ Նաբովթ՝ և մեռաւ:

15 *Եւ եղև՝ իբրև լուաւ Յեզաբէլ՝ թէ քարկոծեցաւ Նաբովթ՝ և մեռաւ. ասէ Յեզաբէլ ցԱքաաբ. արի ժառանգեա զայգին Նաբովթայ յեզրայելացւոյ՝ զոր ոչ ետ քեզ ընդ արծաթոյ. զի ոչ է Նաբովթ կենդանի՝ քանզի մեռաւ: 16 *Եւ եղև՝ իբրև լուաւ Աքաաբ՝ թէ մեռաւ Նաբովթ յեզրայելացի. (պատառեաց զհանդերձս իւր՝ և զգեցաւ քուրձ՝ և եղև յետ այնորիկ.) յարեաւ Աքաաբ՝ և էջ յայգին Նաբովթայ յեզրայելացւոյ ժառանգել:

17 *Եւ խօսեցաւ Տր ընդ Եղիայի Թեզբացւոյ՝ և ասէ: 18 *Արի էջ ընդ առաջ Աքաաբու արքայի Իէլի՝ որ ՚ի Սամարիա. և նա էջ յայգի Նաբովթայ ժառանգել զնա: 19 *Եւ խօսեսցիս ընդ նմա՝ և ասասցես. այսպէս ասէ Տէր. ոպ սպաներ՝ և ժառանգեցեր՝ վն այդորիկ այսպէս ասէ Տր. ‖՚ի տեղւոջ ուր լափեցին շունք և խոզք զարիւն Նաբովթայ, անդ լափեսցեն զարիւն քո. և բոզք լուասցին յարեան քում: 20 *Եւ ասէ Աքաաբ ցԵղիա. եթէ գտեր զիս թշնամի իմ. և ասէ՝ գտի. զի ՚ի զուր հպարտացար գործել չար առաջի Տն. առ ՚ի բարկացուցանելոյ զնա: 21 *‖Արդ ահա ես ածից ՚ի վերայ քո չարիս. և բորբոքեցից զկնի քո. և սատակեցից զԱքաաբու՝ որ միզիցէ զորմով. և զնեղեալն և զլքեալն յԻէլ: 22 *Եւ տաց զտունն քո իբրև ‖զտունն Յերոբովամու որդւոյ Նաբատայ. և իբրև զտունն ‖Բաասայ որդւոյ Աքիայ. վն բարկութեանն որով բարկացուցեր զիս՝ և յանցուցեր զԻէլ: 23 ‖*Եւ առ Յեզաբէլ խօսեցաւ Տր՝ և ասէ՝ շունք կերիցեն զնա առ պարսպին յեզրայելի: 24 *Զմեռեալ Աքաաբու ՚ի քաղաքի՝ կերիցեն շունք. և զմեռեալ նորա ՚ի դաշտի, կերիցեն թռչունք երկնից: 25 *Սակայն ՚ի զուր մեծամտեցաւ Աքաաբ առնել չար առաջի Տն. որպէս յիմարեցոյց զնա Յեզաբէլ կին իւր: 26 *Եւ գարշեցաւ յոյժ երթալ զհետ գարշելեացն ըստ ամի զոր արար ամորհացին. զոր սատակեաց Տէր յերեսաց որդւոցն Իէլի: 27 *Եւ վասն բանին զի սորջացաւ արքայ յերեսաց Տն. և երթայր լալով. և պատառեաց զպատմուճան իւր. և զգեցաւ քուրձ ՚ի մարմին իւրոյ. և

‖Ներ. 22.38.

[illegible]

‖4 Թագ. 9. 8.

‖Վեր. 15.29.

‖Վեր. 16.3.

‖4 Թագ. 9.36.

և պահեաց · և զգեցաւ քուրձ յաւ_ ուրն յորում սպան զնաբովթ յեզրայէ_ լացի · և գնայր կորակոր: *Եւ եղև 28 բան Տն 'ի ձեռն ծառայի իւրոյ եղի_ այի վասն աքաաբու · և ասէ Տր: *Տեսեր զի զղջացաւ աքաաբ յերե_ 29 սաց իմոց · փոխանակ զի ամնչորեաց յերեսաց իմոց · ոչ ածից չարիս յաւ_ ուրս նր · այլ յաւուրս որդւոյ նորա ածից չարիս 'ի վերայ տան նորա:

Դ Թագ. 9.26.

## ԳԼ: ԻԲ:

Եւ նստան զերեամ · և ոչ էր պա_ 1 տերազմ 'ի մէջ ասորւոց և 'ի մէջ իէլի: *Եւ եղև յամին երրորդի էջ 2 յովսափատ արքայ յուդայ՝ առ արքայ իէլի: *Եւ ասէ արքայն իէլի ցծա_ 3 ռայս իւր · ո՞չ գիտէք՝ եթէ մեր է ռա մաթ գաղաադու · և մեք լռեալ կամք առնուլ զնա 'ի ձեռաց արքային ասո րւոց: *Եւ ասէ արքայ իէլի ցյովսա_ 4 փատ · եկեսցես ընդ մեզ յռամաթ գա_ ղաադու 'ի պատերազմ: և ասէ յովսա փատ ցարքայն իսրայէլի · որպէս ես · նոյն պէս և դու · և որպէս զօրք իմ · զօրք քո · և որպէս երիվարք իմ · երիվարք քո: *Եւ ասէ յովսափատ արքայ յուդայ 5 ցարքայն իէլի · ա՛յլ է, հարցցուք այսօր զՏր: *Եւ ժողովեաց արքայն իէլի 6 զամ մարգարէս իբրև արս չորեքհար իւր · և ասէ ցնոսա արքայ · երթա՞յց յռամաթ գաղաադու 'ի պատերազմ. թէ զտեղի կալայց · և ասեն · ել · և տալով տացէ Տր 'ի ձեռս արքային: *Եւ ասէ յովսափատ ցարքայն իէլի · 7 իցէ՞ ոք այլեւս աստ մարգարէ Տն՝ թէ չիցէ · և հարցցուք զՏր նովաւ: *Եւ ասէ արքայ իէլի ցյովսափատ · է 8 աստ այր մի Ա.Յ՝ հարցանել նովաւ զՏր · և ես ատեցի զնա · զի ոչ խօսի զինէն բարի, այլ չար · միքիա որդի յեմլեայ: և ասէ յովսափատ արքայ յու դայ · մի՛ ասասցէ այդպէս արքայ: *Եւ 9 կոչեաց արքայ իէլի ներքինի մի, և ասէ · վաղվաղակի ած այսր զմիքիա որդի յեմլեայ: *Եւ արքայ իէլի և յովսափատ 10 արքայ յուդայ նստէին այր իւրաքանչ իւր յաթոռ իւրում վառեալ 'ի դրունս սամարիայ · և ամ մարգարէքն մար_ գարէանային առաջի նոցա: *Եւ ա_ 11 րար իւր սեդեկիա որդի քանանու եղ ջիւրս երկաթիս՝ և ասէ · այսպէս ասէ Տր · սոքօք խեթկեսցես զասորիս մին չև սպառեսցին: *Եւ ամենայն մար 12 գարէքն մարգարէանային նոյնպէս · և ասէին · ել յռամաթ գաղաադու · և յաջողեսցիս · և տացէ Տր 'ի ձեռս քո զարքայն ասորւոց: *Եւ հրեշ_ 13

Բ. Մն. 18.2.

տակն, որ չոգաւ կոչել զմիքիա · պատ մեաց նմա՝ և ասէ · ահաւասիկ ամ մարգարէքն խօսին իբրև ընդ մի բե րան բարի զարքայէ · արդ եղիցի բանս քո իբրև զմիոյ 'ի նոցանէն · և խօսեա՛ց 14 բարի: *Եւ ասէ միքիա · կենդանի է Տր · եթէ ոչ՝ զոր ինչ ասասցէ ցիս Տր, 15 զայն խօսեցայց: *Եւ եկն առ ար_ քայ · և ասէ ցնա արքայ · միքիա · եկի՞ց յռամաթ գաղաադու 'ի պատերազմ; թէ զտեղի կալայց · և ասէ, ե՛լ և յա ջողեսցիս · և տացէ Տր 'ի ձեռս ար_ 16 քային: *Եւ ասէ ցնա արքայ · զար_ ձեալ կրկին երդմնեցուցեալ զքեզ · զի խօսեսցիս ընդ իս ճշմարտութի յա 17 նուն Տն: *Եւ ասէ, ոչ այդպէս է · տեսի զամ իէլ ցրուեալ ընդ լերինս իբրև զհօտ՝ որոյ ոչ գուցէ հովիւ · և ասէ Տր · ոչ գոն դոցա տեարք · դարձ_ ցին իւրաքանչիւրոք 'ի տունս իւր խա_ 18 ղաղութբ: *Եւ ասէ արքայն իէլի ցյովսափատ արքայ յուդայ · ո՞չ ասացի քեզ թէ ոչ մարգարէանայ նա ինձ 19 բարի · բայց եթէ չար: *Եւ ասէ մի_ քիա · ոչ այդպէս · ոչ ես ինչ · այլ լուր զպատգամ Տն · ոչ այսպէսն տեսի զՏր Ա.Ծ իէլի նստեալ 'ի վերայ աթո ռոյ իւրոյ · և ամ զօրք երկնից կային շուրջ զնովաւ, յաջմէ և յահեկէ:

ոչ ես ինչ խօսիմ յի նէն

20 *Եւ ասէ Տր · ո՞ պատրեսցէ զաքաաբ արքայ իէլի · և ելցէ՝ անկցի յռամաթ գաղաադու · և ասէ ոմն այսպէս · և 21 ոմն այնպէս: *Եւ ել ոգի · և եկաց առաջի Տն՝ և ասէ · ես պատրեցից 22 զնա · և ասէ Տր · իւ: *Եւ ասէ · ե_ լից՝ և եղէց ոգի սուտ 'ի բերան ամ մարգարէից նորա · և ասէ՝ պատրես_ ցես, և կարասցես · ե՛լ և արա այդպ: 23 *Եւ արդ ահա ետ Տր ոգի սուտ 'ի բերան ամ մարգարէիցդ քոց այդո_ ցիկ · և Տր խօսեցաւ 'ի վր քո չարիս: 24 *Եւ մատեաւ սեդեկիա որդի քանա նու · և եհար միքիայի զծնօտն նր, և ասէ: ո՞ր հոգի Տն է այն · որ էանց յի 25 նէն, և խօսեցաւ 'ի քեզ: *Եւ ասէ մի_ քիա: ահա դու իսկ տեսցես յաւուր յայնմիկ · յորում մտանիցես 'ի սե_ 26 նեակ 'ի սենեկէ թաքչել: *Եւ ասէ արքայ իէլի · կալարուք զմիքիա · և տարէք ցամոն քաղաքապետ · և ցյովաս 27 որդի արքային: *Եւ ասասջիք · այսպ ասէ արքայ · դիք զդա 'ի բանտի · և կերիցէ զհաց նեղութե · և զջուր նե_ ղութե · մինչև դարձայց խաղաղութբ: 28 *Եւ ասէ միքիա · եթէ դու դառնա լով դարձցիս խաղաղութբ · ապա ոչ խօսեցաւ յիս Տէր: և ասէ՝ լուարուք 29 զօրքդ ամենեքեան: *Եւ ել արքայ

Իլի՝ և յովսափատ արքայ յուդայ ընդ
նմա յռամովթ գաղաադու։ 30 * Եւ ա-
սէ արքայ Իլի ցյովսափատ արքայ
յուդայ։ այլակերպեսցայց՝ և մտից 'ի
պատերազմ։ և դու զգեցիր զիմ հան
դերձ։ և այլակերպեցաւ արքայն Իլի.
և եմուտ 'ի ճակատն։ 31 * Եւ արքայն
ասորւոց պատուէր ետ կառավարաց
իւրոց. և ասէ՝ մի՛ մարտնչիջիք ընդ
մեծի կամ ընդ փոքու. այլ միայն ընդ
արքային Իղի։ 32 * Եւ եղև իբրև տե-
սին կառավարքն զյովսափատ արքայ
յուդայ. ասեն ցմիմեանս. թուի թէ
սա իցէ արքայն Իղի. և պատեցին զնա
պատերազմիւ։ և աղաղակեաց յովսա
փատ։ 33 * Եւ եղև իբրև տեսին կառա
պետքն. եթէ չէ նա արքայն Իլի՝ դար
ձան 'ի նմանէ։ 34 * Եւ ձգեաց միոմն կո
րովութբ զաղեղն իւր. և եհար զար
քայն Իղի ընդ զրահն. և ընդ թոք-
առաջն։ և ասէ ցկառավարն իւր՝
դարձո՛ զձեռն քո. և հա՛ն զիս 'ի պատե
րազմէս. զի խոցեալ եմ։ 35 * Եւ սաստ
կացաւ պատերազմն յաւուր յայնմիկ։
և արքայ կայր 'ի վերայ կառացն ընդ
դէմ ասորւոցն յայգուէ մինչև ցերե-
կոյ։ և հոսիւր արիւնն 'ի վիրէ անտի.
և լնոյր զծոց կառացն. և իբրև ընդ
երեկս եղև՝ ել ոգին։ 36 * Եւ եկաց քա
րոզ զօրուն 'ի բանակին՝ ընդ մտանել
արևուն՝ և ասէ. իւրաքանչիւրոք 'ի
քաղաք իւր՝ և յերկիր իւր։ 37 * Օ՛հ մե-
ռաւ արքայ։ և եկն 'ի սամարիայ և
թաղեցին զարքայ 'ի սամարիայ։ 38 * Եւ
լուացին զկառսն յաւազանն սամա-
րիայ. ‖ և լիզէին խոզք և շունք զար-
իւն նորա. և բոզք լուացան յարեանն
ըստ բանին Տն. զոր խօսեցաւ։ 39 * Եւ
մնացորդք բանից աքաաբու՝ և ամ ինչ
զոր արար. և տունն փղոսկրեայ՝ զոր
շինեաց. և ամ քաղաքքն զորս արար.
ահաւանիկ գրեալ է 'ի գիրս բանից
աւուրց թագաւորացն Իղի։ 40 * Եւ նն
ջեաց աքաաբ ընդ հարս իւր. և թա-
գաւորեաց ոքոզիա որդի նորա ընդ
նորա։ 41 * Եւ յովսափատ որդի ասայի՝
թագաւորեաց 'ի վր յուդայ։ յամին

‖ Վերն. 21.19.

չորրորդի աքաաբու արքայի Իլի։
42 * Թագաւորեաց յովսափատ։ որդի
երեսուն և հինգ ամաց էր 'ի թագա
ւորել իւրում. և քսան և հինգ ամ թա
գաւորեաց յեմ։ և անուն մօր նորա
աուբա դուստր սաղաաղայ։ 43 * Եւ
գնաց յամ ճանապարհս ասայի հօր
իւրոյ. և ոչ խոտորեցաւ 'ի նմանէ ա-
նել ուղղութի առաջի Տն։ 44 * Բայց 'ի
բարձանցն. զի ոչ եբարձ։ քանզի տա
կաւին զոհէր ժողովուրդն, և արկա-
նէր խունկս 'ի վր բարձանց։ 45 * Եւ
խաղաղութի էր յովսափատ ընդ ար
քային Իլի։ 46 * Եւ մնացորդք բանիցն
յովսափատու, և զօրութիքն զորս ա-
րար. և որչափ պատերազմեցաւ. ո՛չ
ահաւանիկ գրեալ են 'ի գիրս բանից ա-
ւուրց թագաւորացն յուդայ։ 47 * Եւ
զաւելորդս նուիրելոցն. որք մնացին
յաւուրս հօր նորա՝ քաղեաց յերկրէն
48 * Եւ թագաւոր ոչ գոյր յեդոմ հա-
տատեալ։ 49 * Եւ արքայ յովսափատ ա-
րար նաւս թարսսացիս. երթալ յով
փիր զոսկւոյ. և ոչ գնացին։ քանզի խո-
խորտակեցան նաւքն 'ի գասիոնգա-
բեր։ 50 * Յայնժամ ասէ ոքոզիա որդի
աքաաբու ցյովսափատ։ երթիցեն
ծառայք քո ընդ ծառայս իմ։ և նաւք
քո ընդ նաւս իմ. և ոչ կամեցաւ յով
սափատ։ 51 * Եւ ննջեաց յովսափատ ընդ
հարս իւր. և թաղեցաւ առ հարս իւր
'ի քաղաքի դաւթի հօր իւրոյ։ և թա
գաւորեաց յորամ որդի նորա ընդ
նորա։ 52 * Եւ ոքոզիա որդի աքաաբու
թագաւորեաց 'ի վերայ իսրայէլի 'ի
սամարիայ. յամին եօթնուտասներոր
դի յովսափատայ արքայի յուդայ. և
թագաւորեաց յԻղի ամս երկուս։
53 * Եւ արար չար առաջի Տն։ և գնաց
զճանապարհս աքաաբու հօր իւրոյ. և
զճանապարհս յեզաբելայ մօր իւրոյ.
և 'ի մեղս տանն յերոբովամայ որդւոյ
նաբատայ. որ յանցոյցն զիսրայէլ։
54 * Եւ ծառայեաց բահաղիմացն. և
երկիր եպագ նմա. և բարկացոյց զՏր
Այ իսրայէլի ըստ ամենայնի եղելոցն
յառաջ քան զնա։



Եւ ահա կառք հրեղէնք. և երիվարք հրեղէնք անջրպետեցին ՚ի մէջ երկոցունցն։ 2. 11.



Եւ ելին երկու արջք յանտառէ. և պատառեցին ՚ի նոցանէ քառասուն և երկուս մանկունս։ 2. 24.

# ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐԱՑ։

## ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑՒՈՑՆ ՄԱՂԱՔԻՄ ԵՐԿՐՈՐԴ։ ՈՐ Է ԵՐԿՐՈՐԴ ԹԱԳԱՒՈՐԱՑ։

### Գլուխ Առաջներորդ։



1 ԵՒ ՆՇԿԱՀԵԱՑ Մովաբ զԻսրայէլ. յետ մեռանելոյ Աքաաբու։ * 2 Եւ անկաւ Ոքոզիա ՚ի վանդակապատէ վերնատանն իւրոյ՝ որ ՚ի Սամարիա. և խօթացաւ։ և առաքեաց հրեշտակս. և ասէ ցնս. երթա՛յք հարցէք ՚ի Բահաղ զԶանանձիկ աստուածն Ակկարոնի. եթէ ապրիցիմ ես յախտէ աստի յայսմանէ (և գնացին հարցանել ՚ի նմանէ։) * 3 Եւ հրեշտակ Տն կոչեաց զԵղիա Թեզբացի. և ասէ. արի՛ և երթ ընդ առաջ հրեշտակացն Ոքոզիայ արքայի Սամարիայ. և ասասցես ցնոսա։ առ ՚ի չգոյէ՞ Այ ՚ի մէջ Իղի երթայք դուք հարցանել ՚ի Բահաղ զԶանանձիկ աստուածն Ակկարոնի։ 4 * Եւ ո՛չ այդպէս։ այլ այսպէս ասէ Տր. ՚ի մահճիճէդ քո յոր ելեր, ո՛չ իջցես այտի. այլ ՚ի դմին մահու մեռցիս։ և չոգաւ Եղիա. և ասէ ցնս։ 5 * Եւ դարձան հրեշտակքն առ նա։ և ասէ ցնս։ զի՞ է. զի դարձայք։ 6 * Եւ ասեն ցնա. այ՛ր ել ընդ առաջ մեր. և ասէ ցմեզ. երթա՛յք դարձարուք առ արքայն՝ որ առաքեաց զձեզ. և ասասջիք ցնա. այսպէս ասէ Տէր։ առ ՚ի չգոյէ Այ ՚ի մէջ Իղի՝ երթաս հարցանել ՚ի Բահաղ զԶանանձիկ Այն Ակկարոնի։ ո՛չ այդպէս. այլ ՚ի մահճիճէդ յոր ելեր՝ ո՛չ իջցես այտի. այլ մահու մեռցիս։ 7 * Եւ խօսեցաւ ընդ նոսա՝ և ասէ. զի՞նչ նշանք են առն, որ ել ընդ առաջ ձեր. և խօսեցաւ ընդ

ձեզ զբանսդ զայդոսիկ ։ 8 * Եւ ասեն ցնա . այր թաւ . և գօտի մաշկեղէն ածեալ ընդ մէջ իւր ։ և ասէ . Եղիա Թեսբացի է այն ։ 9 * Եւ առաքեաց առ նա իշխան յիսնապետ և զյիսունսն իւր ։ և ել՝ և եկն առ նա ։ և Եղիա նստէր 'ի վերայ գլխոյ լերինն ։ և խօսեցաւ յիսնապետն՝ և ասէ ցնա . այր Ա՟Ծ . արքայ կոչեաց զքեզ՝ էջ այտի ։ 10 * Պատասխանի ետ Եղիա՝ և ասէ ցյիսնապետն . եթէ այր Ա՟Ծ եմ ես , իջցէ հուր յերկնից՝ և կերիցէ զքեզ . և զյիսունսդ քո ։ և էջ հուր յերկնից . և եկեր զնա և զյիսունսն իւր ։ 11 * Եւ յաւել արքայ առաքել առ նա այլ յիսնապետ . և զյիսունսն իւր ։ և ել , և խօսեցաւ յիսնապետն՝ և ասէ ցնա . այր Ա՟Ծ . այսպէս ասէ արքայ . էջ այտի վաղվաղակի ։ 12 * Պատասխանի ետ Եղիա՝ և ասէ ցնա ։ եթէ այր Ա՟Ծ իցեմ , իջցէ հուր յերկնից . և կերիցէ զքեզ . և զյիսունսդ քո ։ և էջ հուր Ա՟Ծ յերկնից . և եկեր զնա . և զյիսունսն նորա ։ 13 * Եւ յաւել ևս արքայ առաքել յիսնապետ երրորդ . և զյիսունսն նորա ։ և ել՝ եկն առ նա յիսնապետն երրորդ . և անկաւ 'ի վ՟ր ծնգաց իւրոց առաջի Եղիայի՝ և աղաչեաց զնա . և խօսեցաւ ը՟ն նմա և ասէ . այր Ա՟Ծ . պատուական լիցի անձն իմ , և անձն ծառայից քոց այսոցիկ յիսնից առաջի աչաց քոց ։ 14 * Ահա անկաւ հուր յերկնից . և՛ եկեր զերկուս յիսնապետսն զառաջինս , և զյիսունսն նց ։ և արդ պատուական լիցին անձինք ծառայից քոց յաչս քո ։ 15 * Եւ խօսեցաւ հրեշտակ Տ՟ն ընդ Եղիայի՝ և ասէ . էջ ընդ նմա . և մի՛ երկնչիցիս յերեսաց նց ։ և յարեաւ Եղիա . և էջ ընդ նմա առ արքայ ։ 16 * Եւ խօսեցաւ ընդ նմա՝ և ասէ . փոխանակ զի առաքեցեր հրեշտակս հարցանել 'ի Բահաղ զձանձիկ աստուածն ակկարոնի . ոչ առ 'ի չգոյէ Ա՟Ծ 'ի մէջ Ի՟լի հարցանել 'ի նմանէ ։ ոչ այդպէս , այլ 'ի մահիճէդ յոր ելեր . մի՛ իջցես այտի . այլ մահու մեռցիս ։ 17 * Եւ մեռաւ ըստ բանին Տ՟ն . զոր խօսեցաւ Եղիա ։ ( և յովրամ որդի աքաաբու թագաւորէ 'ի վերայ Ի՟լի ամս երկոտասան . յամի ութուտասներորդի յովսափատայ արքայի յուդայ . և արար չար առաջի Տ՟ն . բայց ոչ իբրև զեղբարս իւր . և ոչ իբրև զմայր իւր ։ և եբարձ զարձանս բահաղու . զոր արար հայր նր ։ սակայն 'ի մեղս տանն յերոբովամու , որ յանցոյց զիսրայէլ՝ յարեցաւ , և ոչ մեկնեցաւ 'ի նոցանէ ։ և սրտմտեցաւ բարկութ՟բ Տր 'ի վ՟ր տանն աքաաբու ։ ) և թագաւորեաց յովրամ եղբայր նորա ընդ նր . յամի երրորդի յովրամայ արքայի յուդայ որդւոյ յովսափատու . զի ոչ գոյր նորա որդի ։ 18 * Եւ մնացորդք բանիցն ոքոզիայ զոր արար . ո՞չ ահանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց Թագաւորացն իսրայէլի ։

## ԳԼ ։ Բ ։

1 Եւ եղև 'ի վերացուցանել Տեառն զԵղիայ շարժմամբ յերկինս . և գնացին Եղիա և Եղիսէէ 'ի գաղգաղայ ։ 2 * Եւ ասէ Եղիա ցԵղիսէէ . նիստ դու աստ . զի Տր առաքեաց զիս 'ի բեթէլ ։ և ասէ Եղիսէէ . կենդանի է Տր . և կենդանի է անձն քո՝ թէ թողից ըզքեզ ։ և եկին 'ի բեթէլ ։ 3 * Եւ ելին որդիք մարգարէիցն՝ որք 'ի բեթէլ՝ առ Եղիսէէ . և ասեն ցնա . եթէ գիտիցես . զի այսօր առնու Տր զտէրդ 'ի գլխոյ քումմէ ։ և ասէ . գիտեմ և ես . լռեա լերուք ։ 4 * Եւ ասէ Եղիա ցԵղիսէէ . նիստ դու աստ . զի Տէր առաքեաց զիս յերիքով ։ և ասէ . կենդանի է Տր . և կենդանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ ։ և եկին յերիքով ։ 5 * Եւ մատեան որդիք մարգարէիցն որք յերիքով՝ առ Եղիսէէ . և ասեն ցնա . եթէ գիտիցես՝ զի այսօր առնու Տէր զտէրդ 'ի գլխոյ քումմէ ։ և ասէ . գիտեմ և ես . լռեա լերուք ։ 6 * Եւ ասէ ցնա Եղիա . նիստ դու աստ . զի Տէր առաքեաց զիս 'ի յորդանան ։ և ասէ Եղիսէէ . կենդանի է Տր . և կենդանի է անձն քո՝ թէ թողից զքեզ ։ և գնացին երկոքեան ։ 7 * Եւ յիսուն այր յորդւոցն մարգարէից . և կացին 'ի հանդիպոյ 'ի բացեայ . և երկոքին կացին յեզերն յորդանանու ։ 8 * Եւ էառ Եղիա զմաշկեակն իւր . և ծալեաց . և եհար զջուրսն . և բաժանեցաւ ջուրսն յայսկոյս և յայնկոյս . և անցին երկոքեան ընդ ցամաք ։ 9 * Եւ եղև ընդ անցանելն նոցա . ասէ Եղիա . Եղիսէէ , խնդրեա՛ զինչ արարից քեզ մինչև վերացեալ եմ 'ի քէն ։ և ասէ Եղիսէէ . եղիցի կրկին ոգի քո 'ի վերայ իմ ։ 10 * Եւ ասէ Եղիա . դժուարինս խնդրեցեր . բայց թէ տեսցես զիս յամբառնալ իմում 'ի քէն . եղիցի այնպէս ։ ապա թէ ոչ՝ մի՛ եղիցի ։ 11 * Եւ եղև մինչ դեռ գնային նոքա . երթային , և խօսէին . և ահա կառք հրեղէնք և երիվարք հրեղէնք , անջրպետեցին 'ի մէջ երկոցունց . ‖ և վերացաւ Եղիա շարժմամբ յերկինս ։ 12 * Եւ Եղիսէէ հայէր . և աղաղակէր . հայր . հայր . կառքդ Ի՟լի

‖ Սիր. 48. 13. 1. Մակ. 2. 58.

՚իլի և հեծեալք նորա · և այլ ոչ ևս ետես զնա : և բուռն եհար զհանդերձս իւրոց, և պատառեաց յերկուս ծուէնս : 13 *Եւ եառ եղիսէէ զմաշկեակն եղիայի զոր ընկեց ՚ի վր նորա : և դարձաւ եղիսէէ · և եկաց առ եզերն յորդանանու : 14 *Եւ եառ զմաշկեակն եղիայի · զոր ընկէց ՚ի վր նր · և եհար զջուրսն՝ և ասէ · ո՞ւր են Տէր Ած եղիայի ափփով : և եհար զջուրսն · և բաժանեցան յայսկոյս յայնկոյս · և անց եղիսէէ : 15 *Եւ տեսին որդիք մարգարէիցն, որք յերիքով ՚ի հանդէպ այնր էին, և ասեն, հանգեաւ ոգին եղիայի ՚ի վր եղիսէի : և եկին ընդ առաջ նր՝ և երկիր պագին նմա ՚ի վր երկրի : 16 *Եւ ասեն ցնա · ահաւասիկ են ընդ ծառայս քո որդիք զօրութեան արք յիսուն · երթիցեն՝ և խնդրեսցեն զՏրն քո · գուցէ եառ զնա Հոգին Տն · և ընկէց զնա առ յորդանանու՝ կամ ՚ի վերայ միոյ ուրուք լերանց · և կամ ՚ի վերայ միոյ ուրուք բլրոյ : և ասէ եղիսէէ · մի առաքէք : 17 *Եւ բռնադատեցին զնա՝ մինչև ամաչէր · և ասէ՝ առաքեցէք : և առաքեցին յիսուն արս · և խնդրեցին զերիս աւուրս՝ և ոչ գտին զնա : 18 *Եւ դարձան առ նա · և նա նստէր յերիքով · և ասէ ցնոսա եղիսէէ · ո՞չ ասացի ձեզ՝ թէ մի երթայք : 19 *Եւ ասեն արք քաղաքին ցեղիսէէ · ահաւասիկ բնակութիւն քաղաքիս բարի է, որպէս և տէրդ խոկ տեսանէ · և ջուրքս չար · և երկիրս անզաւակ : 20 *Եւ ասէ եղիսէէ · առէք առ իս կուժ մի նոր · և դիք այդր : և բերին առ նա : 21 *Եւ ել եղիսէէ յականս ջրոցն՝ և եարկ անդ աղ : և ասէ՝ այսպէս ասէ Տր · բժշկեմ զջուրս զայսոսիկ · և մի ևս լիցի այդ ՚ի մահ և յանզաւակութիւն : 22 *Եւ բժշկեցան ջուրքն մինչև ցայսօր ըստ բանին եղիսէի · զոր խօսեցաւ : 23 *Եւ ել անտի ՚ի բեթել : և մինչդեռ ելանէր զճանապարհն · մանկտի մանրիկ ելին ՚ի քաղաքէն · և աղաղակէին ՚ի նա · և ասէին · ել կնտակ · ել կնտակ : 24 *Դարձաւ ՚ի թիկունս · և ետես զնս · և անէծ զնոսա յանուն Տն՝ և ասէ · որդիք յանցանաց, և դատարկութեան : և ելին երկու արջք յանտառէ · և պատառեցին ՚ի նոցանէ քառասուն և երկուս մանկունս : 25 *Եւ գնաց անտի ՚ի լեառնն ՚ի կարմեղոս · և անտի դարձաւ ՚ի սամարիայ :

## ԳԼ: Գ:

1 Եւ յովրամ որդի աքաաբու՝ թագաւորեաց յիլի ՚ի սամարիայ · յամի ութուտասներորդի յոսափատայ արքայի յուդայ · և թագաւորեաց ամս երկոտասան : 2 *Եւ արար չար առաջի Տն · բայց ոչ իբրև զհայրն իւր · և ոչ իբրև զմայր իւր : և կործանեաց զարձանս իւր · զոր արար հայր նորա : 3 *Սակայն ՚ի մեղս յերոբովամու որդւոյ նաբատայ · որ յանցոյցն զիսրայէլ, յարեցաւ · և ոչ մեկնեցաւ ՚ի նոցանէ : 4 *Եւ ամոս արքայ մովաբայ էր նեկէթ : և տայր արքային իլի հարկս · հարիւր հազար մաքեաց · և հարիւր հազար խոյոց գեղմնաւորաց : 5 *Եւ եղև յետ մեռանելոյ աքաաբու · նշկահեաց արքայն մովաբու զարքայն իլի : 6 *Եւ ել արքայ յովրամ յաւուր յայնմիկ ՚ի սամարիայ · և հանդէս արար իլի · և գնաց : 7 *Եւ առաքեաց առ յոսափատ արքայ յուդայ՝ և ասէ · արքայն մովաբու նշկահեաց զիս · եթէ երթայցես ընդ իս ՚ի պատերազմ ՚ի վերայ մովաբու : և ասէ՝ ելից · զի ո՞րպէս դու ես՝ և ես · և ո՞րպէս զօրք քո՝ զօրք իմ · և ո՞րպէս երիվարք քո՝ երիվարք իմ : 8 *Եւ ասէ, ընդ ո՞ր ճանապարհ ելից : և ասէ · ընդ ճանապարհ անապատին եդովմայ : 9 *Եւ գնաց արքայ իլի · և արքայ յուդայ · և արքայ եդովմայ · և պատեցան զեօթն օր ՚ի ճանապարհին · և ոչ գոյր ջուր բանակին՝ և ոչ անասնոցն, որք ընդ նոսա : 10 *Եւ ասէ արքայ իլի : ո՞հ՝ պաշարեաց Տր զերիս թագաւորս եկեալս, տալ զնոսա ՚ի ձեռս մովաբայ : 11 *Եւ ասէ յովսափատ · ո՞չ գուցէ աստ մարգարէ Տն · և հարցցուք զՏր նովաւ : և պատասխանի ետ միոմն ՚ի մանկտւոյն արքային իլի՝ և ասէ · է աստ եղիսէէ որդի սափատայ · որ արկանէր ջուր ձեռաց եղիայի : 12 *Եւ ասէ յոսափատ · գոյ բան Տն ընդ նմա : և իջին առ նա արքայն իլի՝ և յովսափատ արքայ յուդայ · և արքայ եդովմայ : 13 *Եւ ասէ եղիսէէ ցարքայն իլի · զի՞ կայ իմ և քո · երթ առ մարգարէս հօրքոյ · և առ մարգարէս մօրքոյ : և ասէ ցնա արքայն իլի · մի՞ արդեօք կոչեաց Տր զերիս թագաւորս եկեալս տալ զնոսա ՚ի ձեռս մովաբայ : 14 *Եւ ասէ եղիսէէ · կենդանի է Տր զօրութեանց · որոյ կայի առաջի նորա · եթէ չէր առեալ ակն յովսափատայ արքայի յուդայ · եթէ բնաւ հայէի խոկ ՚ի քեզ · և տեսանէի զքեզ : 15 *Բայց արդ ած առ իս սաղմոսասաց : և եղև իբրև նուագեաց սաղմոսասացն · եկն ՚ի վր նր ձեռն Տն : 16 *Եւ ասէ · այսպէս ասէ Տր : արարէք զհեղեղատդ զայդ փոսս փոսս :

*Զի

17 * Զի այսպէս ասէ Տր. ոչ տեսանիցէք զհողմ. եւ ոչ տեսանիցէք անձրեւ. եւ հեղեղատդ լցցի ջրով. եւ արբջիք դուք՝ եւ անասուն ձեր. եւ գրաստք ձեր. 18 * Եւ թեթեւ է այդ յաչս Տն. եւ մատնեցից զՄովաբ ՚ի ձեռս ձեր: 19 * Եւ հարջիք զամ քաղաքս. եւ զամ՝ քաղաք ընտիր. եւ զամ՝ զծառ զաղնիւ կոտորեսջիք. եւ զամ աղբերս ջրոց խցջիք. զամ վիճակս բարիս անպիտանացուսջիք քարամբք: 20 * Եւ եղեւ ընդ առաւօտն՝ յորժամ զոհն ելանէր. եւ ահա ջուրք գային յեկեղեաց Եդովմայ. եւ լցաւ երկիրն ջրով: 21 * Եւ ամ Մովաբ լուաւ թէ ելին թագաւորքն պատերազմել ընդ նոսա. եւ ելին յամ գօտեւորաց եւ ՚ի վեր. եւ կանխեցին ՚ի առաւօտն. եւ կացին առ սահմանաւն: 22 * Եւ ծագեաց արեւ ՚ի վերայ ջրոյն. եւ ետես Մովաբ ՚ի հանդիպոյն զջուրսն կարմիր իբրեւ զարիւն: 23 * Եւ ասեն. արիւնն այն սրոյ է. կռուեցան ընդ միմեանս թագաւորքն. եւ հարին այր զընկեր իւր. եւ արդ հանպա յաւար Մովաբ: 24 * Եւ մտին ՚ի բանակն Իսրայէլի: եւ յարեան Իէլայիքն՝ եւ հարին զՄովաբ. եւ փախեան յերեսաց նոցա: եւ մտանելով մտանէին եւ հարկանէին զՄովաբ: 25 * Եւ զքաղաքսն կործանեցին: եւ յամ վիճակ բարի ընկեցին այր իւրաքանչիւր զքար իւր. եւ լցին զնա: զամ աղբիւր ջրոց խցին: եւ զամ փայտ զաղնիւ հարին, մինչեւ ՚ի թողուլ զքարինս որմոյն քակեալս: եւ պատեցան պարսաւորք՝ եւ հարին զնա: 26 * Եւ ետես արքայն Մովաբայ եթէ սաստկացաւ քան զնա պատերազմն. էառ ընդ իւր եօթնհարիւր արս սուսերաձիգս հատանել՝ երթալ առ արքայն Եդովմայ. եւ ոչ կարացին: 27 * Եւ էառ զորդի իւր զանդրանիկ. զոր թագաւորեցոյց փոխանակ իւր. եւ եհան զնա յողջակէզ ՚ի վր պարսպին. եւ եղեւ զեղջ մեծ ՚ի վր Իէլի: եւ չուեցին ՚ի նմանէ. եւ դարձան յերկիր իւրեանց:

## ԳԼ: Դ:

1 Եւ կին մի ՚ի կանանց որդւոց մարգարէիցն աղաղակէր առ Եղիսէէ եւ ասէր. ծառայ քո այր իմ մեռաւ. եւ դու ինքնին գիտես. զի ծառայ քո էր երկիւղած ՚ի Տէ. եւ փոխատուն եկն առնուլ զերկոսին որդիսն իմ իւր ՚ի ծառայութի: 2 * Եւ ասէ ցնա Եղիսէէ. զի՞նչ արարից քեզ. զի՞նչ՝ պատմեա՛ ինձ, կայ ՚ի տան. եւ նա ասէ. ոչ գոյ ՚ի տան աղախնոյ քոյ՝ եւ ոչ ինչ. բայց իւղ. որով օծանիցիմ: 3 * Եւ ասէ ցնա. երթ՝ խնդրեա՛ քեզ ամանս յամ՝ դրացեաց քոց՝ ամանս ունայնս. եւ մի՛ սակաւացուցանիցես: 4 * Եւ մտցես՝ եւ փակեսցես զդուրսն ընդդէմ քո. եւ ընդդէմ որդւոց քոց. եւ արկցես յամ ամանսն մինչեւ լցցին. եւ առցես: 5 * Եւ գնաց ՚ի նմանէ՝ եւ փակեաց զդուռն ընդդէմ իւր. եւ ընդդէմ որդւոց իւրոց. նոքա մատուցանէին առ նա. եւ նա արկանէր. մինչեւ լցան ամանքն: 6 * Եւ ասէ ցորդիսն իւր. մատուցէք առ իս եւ այլ աման: եւ ասեն ցնա. ոչ է այլ աման: եւ եկաց իւղն: 7 * Եւ չոգաւ՝ պատմեաց առն Այ: եւ ասէ Եղիսէէ. երթ՝ վաճառեա՛ զիւղն, եւ հատուսցես զտոկոսիսն քո. եւ դու՝ եւ որդիքն քո կեցջիք մնացելովդ իւղովդ: 8 * Եւ եղեւ օր. եւ էանց Եղիսէէ ՚ի Սոլմնայ. եւ անդ էր կին մի մեծ. եւ կալաւ զնա ուտել հաց. եւ լինէր ՚ի շատ ժամանակս ՚ի մտանել իւրում անդր, իջանէր ուտել եւ ըմպել: 9 * Եւ ասէ կինն ցայր իւր. գիտեմ. զի այրն Այ սուրբ է. եւ ճանապարհ նր առ մեօք: 10 * Արասցուք նմա վերնատուն մի փոքրիկ. եւ դիցուք ՚ի նմա մահիճս՝ եւ սեղան, եւ աթոռ՝ եւ աշտանակ. եւ եղիցի ՚ի գալ նր առ մեզ, մտցէ անդր: 11 * Եւ եղեւ օր. եւ եկն անդր. եւ եմուտ ՚ի վերնատունն. 12 եւ ննջեաց անդ: * Եւ ասէ՝ ցԳեեզի ցպատանեակն իւր. կոչեա՛ առ իս զՍոմնացին զայն. եւ կոչեաց զնա. եւ եկաց առաջի նորա: 13 * Եւ ասէ ցպատանին. ասա՛ ցնա. ահա կազմեցեր մեզ զայս ամ կազմած. զի՞նչ պարտ իցէ առնել քեզ. եթէ իցեն քո բանք ինչ առ արքայ. եւ կամ առ իշխան զօրուն: եւ նա ասէ. ՚ի մէջ ժողովրդեան իմոյ բնակեալ եմ ես: 14 * Եւ ասէ, զի՞նչ պարտ իցէ առնել նմա: եւ ասէ Գեեզի պատանեակն նր. եւ կարի իսկ քաջ՝ քանզի որդի ոչ գոյ նորա. եւ այրն իւր ծեր է: 15 * Եւ ասէ՝ կոչեա՛ զնա. եւ կոչեաց զնա. եւ եկաց առ դուրսն: 16 * Եւ ասէ ցնա Եղիսէէ. ՚ի ժամանակի յայսմիկ, ՚ի սոյն աւուրս ունիցիս ՚ի գիրկս մանուկ: եւ նա ասէ. մի՛ Տր, այրդ Այ. մի՛ ստեր աղախնոյ քում: 17 * Եւ յղացաւ կինն. եւ ծնաւ որդի ՚ի ժամանակի յայսմիկ. մինչդեռ կենդանի էր. որպէս խօսեցաւ ընդ նմա Եղիսէէ: 18 * Եւ հաստատեցաւ մանուկն. եւ եղեւ իբրեւ ել նա առ հայր իւր ՚ի հնձօղսն: 19 * Ասէ ցհայր իւր. գլուխ իմ գլուխ իմ: եւ ասէ ցպատանին. տար զդա առ մայր իւր: 20 * Եւ տարաւ զնա առ մայր իւր. եւ ննջեաց ՚ի վր ծնգաց նորա մինչեւ ցմիջօրեայ. եւ մեռաւ:

* Եւ

21 *Եւ եհան զնա. և կողմնեցոյց ՚ի մահիճս առնն Այ. և փակեաց ընդդէմ նորա. և ել։ 22 *Եւ կոչեաց զայր իւր՝ և ասէ. առաքեա առ իս զմի ոք ՚ի մանկտւոյդ. և էշ մի յիշոց. և ընթացայց մինչև առ այրն Այ. և դարձայց։ 23 *Եւ ասէ. զի՞ է. զի երթաս դու առ նա այսօր. զի ոչ ամսամուտ է՝ և ոչ շաբաթ. և նա ասէ. ողջոյն է։ 24 *Եւ նա հանդերձեաց զէշն. և ասէ ցպատանին իւր. վարեա. և գնա. և մի՛ ունիր ինչ ելանել ՚ի դա. բայց եթէ ասացից քեզ՝ եթէ եկ այսր. և եկեսցես։ 25 *Եւ երթիցես առ այրն Այ ՚ի լեառնն ՚ի Կարմեղոս. և եղև իբրև ետես Եղիսէէ զգալ նր առ նա. ասէ ցԳէեզի ցպատանեակն իւր. ահա այն Սոմնացին է։ 26 *Ընթա՛ ընդառաջ նր և ասասցես. ողջո՞յն է քեզ. ողջո՞յն է առն քում. ողջո՞յն է մանկանն։ և նա ասէ. ողջոյն է։ 27 *Եւ եկն առ Եղիսէէ ՚ի լեառնն. և բուռն եհար զոտից նր. և մատեաւ Գէեզի մերժել զնա։ և ասէ Եղիսէէ՝ թո՛յլ տուր դմա. զի անձն նորա ցաւագին է. և Տր թաքոյց յինէն. և ոչ պատմեաց ինձ։ 28 *Եւ նա ասէ. միթէ խնդրեցի որդի ՚ի տեառնէ իմմէ. ո՞չ ասացի թէ մի խաբեր զիս։ 29 *Եւ ասէ Եղիսէէ ցԳէեզի. ա՛ծ զգօտի ընդ մէջ քո. և ա՛ռ զցուպ իմ ՚ի ձեռին քում, և երթ. ‖ և եթէ գտանիցես զայր ոք. մի՛ օրհնեսցես զնա. և եթէ օրհնեսցէ զքեզ այր ոք՝ մի՛ տայցես պատասխանի. և դիցես ըզցուպ իմ ՚ի վերայ երեսաց մանկանն։ 30 *Եւ ասէ կինն. կենդանի է Տր. և կենդանի է անձն քո. եթէ թողից զքեզ. և յարեաւ Եղիսէէ. և գնաց զկնի նր։ 31 *Եւ Գէեզի եանց առաջի նոցա. և եդ զցուպն ՚ի վերայ երեսաց մանկանն. և ո՛չ գոյր բարբառ՝ և ոչ լսել. և դարձաւ ընդառաջ նր. պատմեաց նմա՝ և ասէ. ո՛չ յարեաւ մանուկն։ 32 *Եւ եմուտ Եղիսէէ ՚ի տունն. և ահա մանուկն մեռեալ և կողմնեցուցեալ ՚ի մահիճս նր։ 33 *Եւ եմուտ Եղիսէէ ՚ի տունն. և փակեաց զդուրսն ընդդէմ երկոցունց. և եկաց յաղօթս առ Տր։ 34 *Եւ ել, և անկաւ ՚ի վերայ մանկանն. և եդ զբերան իւր ՚ի վերայ բերանոյ նր. և զաչս իւր ՚ի վր աչաց նր. և կծկեցաւ ՚ի վերայ նր. և ջեռաւ մարմին մանկանն։ 35 *Եւ դարձաւ. և գնաց ՚ի տանն յայսկոյս յայնկոյս. և ել՝ և ծածկեաց զմանուկն մինչև ցեօթնանգամ. և եբաց մանուկն զաչս իւր։ 36 *Եւ բարբառեցաւ Եղիսէէ առ Գէեզի՝ և ասէ. կոչեա այսր զՍոմնացին. և կոչեաց զնա. և եմուտ առ նա. և ասէ Եղիսէէ. ա՛ռ զորդի քո։ 37 *Եւ եմուտ կինն. և անկաւ առ ոտս նորա. և երկիր եպագ նմա յերկիր. և էառ զորդին իւր՝ և ել։ 38 *Եւ Եղիսէէ դարձաւ ՚ի Գաղգաղայ. և սո՛վ էր յերկրին. և որդիք մարգարէիցն նստէին առաջի նորա. և ասէ Եղիսէէ ցպատանեակն իւր. կառո՛ դու զսանն մեծ. և եփեա՛ եփոց որդւոց մարգարէիցդ։ 39 *Եւ ել յանդ՝ քաղել արխոյթ. եգիտ որթ յանդին. և քաղեաց ՚ի նմանէ ագոխ լի շալակաւ իւր ով՝ և եկն, և էարկ ՚ի սան եփոյին. քանզի ո՛չ ճանաչէր։ 40 *Եւ էարկ առաջի արանցն ուտել. և եղև յուտել նոցա յեփոցէ անտի, աղաղակեցին, և ասեն. մա՛հ է ՚ի սանի աստ՝ այրդ Այ։ և ո՛չ կարացին ուտել։ 41 *Եւ ասէ՝ առէ՛ք ալիւր. և արկէ՛ք ՚ի սան անդր։ և ասէ Եղիսէէ ցԳէեզի ցպատանեակն իւր. ա՛րկ առաջի ժողովրդեանդ. և կերիցեն. և ոչ եղև վնաս ինչ ՚ի սանէ անտի։ 42 *Եւ եկն այր ՚ի Բեթսարիսայ. և եբեր առնն Այ նկանակս յառաջնոց արմտեաց. և նկանակս գարեղէնս. և պաղատիտս բակեղեթաւ. և ասէ՝ տո՛ւք ժողովրդեանդ, և կերիցեն։ 43 *Եւ ասէ սպասաւորն նր. զի՞նչ տաց զայս առաջի հարիւրոց արանցդ։ և ասէ. տո՛ւր ժողովրդեանդ՝ և կերիցեն. զի այսպէս ասէ Տր. կերիցեն և յաւելցի։ 44 *Եւ եդ առաջի նոցա. և կերին. և թողին նշխարս ըստ բանին Տն։

Ղուկ. 10. 4.

## ԳԼ. Ե.

1 Եւ Նէեման իշխան զօրուն Ասորւոց էր այր մեծ առաջի տեառն իւրոյ. և սքանչելի երեսօք. զի նովաւ ետ Տր զփրկութի Ասորւոց. և այրն հզօր զօրութբ. և էր բորոտեալ։ 2 *Եւ Ասորիքն մեկնակազէնք, ելին՝ և գերեցին յերկրէն Իլի աղջիկ մի փոքրիկ՝ և էր առ կնոջ Նէեմանայ։ 3 *Եւ ասէ ցտիկինն իւր. անկարծ էր թայր տէր իմ առաջի մարգարէին Այ, որ ՚ի Սամարիայ. և անդէն աւաքէր զդա ՚ի բորոտութէ իւրմէ։ 4 *Եւ եմուտ՝ և պատմեաց տեառն իւրում, և ասէ. այսպէս և այսպէս խօսեցաւ աղջիկն. որ յերկրէն Իլի։ 5 *Եւ ասէ արքայն Ասորւոց ցՆէեման՝ երթ. և ես առաքեցից հրովարտակս առ արքայն Իլի։ և գնաց. և էառ ՚ի ձեռին իւրում տասն տաղանդ արծաթոյ. և վեցհազար դահեկան. և տասն պատմուճան հանդերձեալ։ 6 *Եւ տարաւ

հրո‿

հրովարտակքս առ արքայն Ի՟ղի․ արդ իբրև հասցէ առ քեզ հրովարտակդ այդ․ ահա առաքեցի առ քեզ զՆէեման ծառայ իմ․ և ամոքեսցես զդա 'ի բորոտութենէ իւրմէ ։ 7 *Եւ եղև իբրև ընթերցաւ արքայն Ի՟ղի զհրովարտակն, պատառեաց զհանդերձս իւր՝ և ասէ․ միթէ Ա՟ծ իցեմ ես՝ սպանանել կամ կեցուցանել․ զի առաքեաց առ իս ամոքել զայրդ 'ի բորոտութենէ իւրմէ․ բայց գիտասջիք՝ և տեսջիք․ զի պատճառի խնդրէ նա առ իս ։ 8 *Եւ եղև իբրև լուաւ Եղիսէէ այրն Ա՟յ՝ եթէ պատառեաց արքայն Ի՟ղի զհանդերձս իւր․ առաքեաց առ արքայն Ի՟ղի․ և ասէ․ ընդէ՞ր պատառեցեր զհանդերձս քո․ եկեսցէ առ իս Նէեման․ և գիտասցէ եթէ գոյ մարգարէ յԻ՟ղի ։ 9 *Եւ եկն Նէեման երիվարօք և կառօք․ և եկաց առ դուրս տանն Եղիսէի ։ 10 *Եւ առաքեաց Եղիսէէ առ նա հրեշտակս՝ և ասէ․ երթ՝ լուա՛ եօթն անգամ 'ի Յորդանան․ և դարձցի մարմին քո․ և սրբեսցիս ։ 11 *Եւ բարկացաւ Նէեման․ գնաց, և ասէ․ ես ասէի թերևս ելցէ առ իս․ և կացցէ․ և կարդասցէ զանուն Տ՟ն Ա՟յ իւրոյ․ և դիցէ զձեռն իւր 'ի վ՟ր տեղւոյս՝ և ամոքեսցէ զբորոտութիւն ։ 12 *Ո՞չ լաւ իցեն Նաբանա և Փարփարա, գետք Դամասկոսի քան զա՟մ ջուրս Ի՟ղի․ և ընդէ՞ր ոչ երթայց․ և լուացայց 'ի նոսա․ և սրբեցայց ։ և դարձաւ՝ և գնաց սրտմտութ՟բ ։ 13 *Եւ մատեան ծառայք նորա՝ խօսեցան ը՟ նմա․ և ասեն ցնա․ հայր․ եթէ մեծ ինչ բան խօսեցեալ էր ընդ քեզ մարգարէին, ո՞չ ապաքէն պարտ էր առնել․ թող թէ ասաց՝ լուացիր և սրբեսցիս ։

Ղ՟ուկ․ 4․27․

14 *Եւ էջ Նէեման՝ և մկրտեցաւ 'ի Յորդանան եօթն անգամ ըստ բանին Եղիսէի․ և դարձաւ մարմին նր՟ իբրև զմարմին մանկան մատաղոյ՝ և սրբեցաւ ։ 15 *Եւ դարձաւ առ Եղիսէէ ինքն, և ա՟մ բանակն իւր․ և եկն եկաց առաջի նորա՝ և ասէ․ ահա գիտացի եթէ ոչ գոյ Ա՟ծ յա՟մ երկրի․ բայց միայն 'ի մէջ Իսրայէլի․ և արդ ա՛ռ օրհնութի՛ 'ի ծառայէ քումմէ ։ 16 *Եւ ասէ Եղիսէէ․ կենդանի է Տ՟ր․ որոյ կացի առաջի նր՟․ եթէ առից ինչ ։ և ստիպեաց զնա առնուլ․ և ոչ հաւանեցաւ ։ 17 *Եւ ասէ Նէեման․ իսկ որովհետև ոչ տացին ծառայի քումմէ բեռն ինչ զուգից ջորւոյ 'ի հողոյ երկրիս․ զի ոչ ևս արասցէ ծառայ քո ողջակէզս՝ և զոհս աստուածոց օտարաց․ բայց միայն Տ՟ն ։

որովհե- տև այդ- պէս է, դ- բէ ո՞չ տա- ցեն

18 *Վ՟ն բանիս այսորիկ քաւեսցէ Տէր զծառայ քո՝ 'ի մտանել տեառն իմոյ 'ի տուն Ռեմանայ երկիր պագանել նմա․ յորժամ յենուցու 'ի ձեռս իմ․ և երկիր պագանիցեմ՝ 'ի տանն Ռեմանայ․ 'ի պագանել նորա երկիր 'ի տանն Ռեմանայ․ և քաւեսցէ Տ՟ր զծառայ քո վ՟ն բանիս այսորիկ ։ 19 *Եւ ասէ Եղիսէէ ցՆէեման․ երթ խաղաղութ՟բ ։ և գնաց 'ի նմանէ յերկրէն Ի՟ղի ։ 20 *Եւ ասէ Գեեզի պատանեակն Եղիսէի․ ահա խնայեաց Տ՟ր իմ 'ի Նէեման ասորի․ չառնուլ ինչ 'ի ձեռանէ նորա․ յորոց մատոյցն․ կենդանի է Տ՟ր՝ եթէ ոչ ընթացայց զհետ նր՟․ և առից ինչ անտի ։ 21 *Եւ պնդեցաւ Գեեզի զհետ Նէեմանայ․ և ետես զնա Նէեման ընթացեալ զհետ նորա․ և դարձաւ ընդ առաջ նր՟ 'ի կառացն՝ և ասէ․ ողջո՞յն է ։ 22 *Եւ ասէ ողջոյն է․ Տ՟ր իմ առաքեաց զիս առ քեզ՝ և ասէ․ ահա եկին առ իս երկու պատանեակք 'ի լեռնէ Եփրեմի յորդւոց մարգարէից․ տո՛ւր նց՟ տաղանդ մի արծաթոյ․ և երկուս պատմուճանս հանդերձեալ ։ 23 *Եւ ասէ Նէեման․ եթէ այդպէս իցէ, ա՛ռ երկս տաղանդս արծաթոյ․ և բռնադատեաց զնա․ և ծրարեաց երկս տաղանդս արծաթոյ յերկուս պարկս․ և երկուս պատմուճանս հանդերձելս․ և ետ ցերկուս ծառայս իւր՝ և բարձին առաջի նր՟ ։ 24 *Եւ եկին 'ի մթին․ և էառ 'ի ձեռաց նց՟․ և եդ 'ի տան․ և արձակեաց զարսն՝ և գնացին ։ 25 *Եւ ինքն եմուտ․ և կայր առաջի Տ՟ն իւրոյ՝ և ասէ ցնա Եղիսէէ․ ուստի՞ գաս Գեեզի․ և ասէ․ չիք երթեալ ծառայի քո ոչ յայսկոյս․ և ոչ յայնկոյս ։ 26 *Եւ ասէ Եղիսէէ՝ ո՞չ սիրտ իմ գնայր, յորժամ դարձաւ այրն 'ի կառաց անտի ընդ առաջ քո․ և արդ առեր զարծաթն և զհանդերձսն 'ի ձիթենիս․ և յայգիս՝ և յարջառս․ և յոչխարս․ և 'ի ծառայս և յաղախնայս ։ 27 *Եւ բորոտութիւն Նէեմանայ յարեսցի 'ի քեզ․ և 'ի զաւակ քո յաւիտեան․ և ել յերեսաց նորա բորոտեալ իբրև զձիւն ։

## ԳԼ ։ Զ ։

1 Եւ ասեն որդիք մարգարէիցն ցԵղիսէէ․ ահաւասիկ տեղիս, յորում մեք բնակեալ եմք՝ նեղ է մեզ ։ 2 *Երթիցուք մինչև ցՅորդանան․ և առցուք անտի այր իւրաքանչիւր գերան մի․ և արասցուք մեզ անդ բնակութի ։ և ասէ․ երթայք ։ 3 *Եւ ասէ միոյն․ եկ և դու մեղմով՝ երթիցես ընդ ծառայս քո ։ և նա ասէ․ ես եկից ։ 4 *Եւ գնաց ընդ նոսա․ և չոգան 'ի Յորդանան․ և հարկանէին զփայտ ։ 5 *Եւ

ահա

աՀա մինն մինչդեռ ընկենոյր զհեծանն,
անկաւ երկաթն 'ի ջուրն. և վայեաց.
և ասէ, ո՛հ Տէր : և զայն յանօթ առեալ
էր : 6 *Եւ ասէ այրն Այ. յո՞ր վայր
անկաւ : և եցոյց նմա զտեղին : և ձեղ_
քեաց զփայտ. և ընկէց անդր. և 'ի
վեր եկաց երկաթն : 7 *Եւ ասէ. վե_
րացո՛ քեզէն. և ձգեաց զձեռն իւր՝
և էառ զնա : 8 *Եւ արքային ասորւոց
տայր պատերազմ ընդ իսրայէլի. խոր
հեցաւ ընդ ծառայս իւր՝ և ասէ. 'ի
տեղի մի յէղմօնի բանակեցայց 'ի դա
րանի : 9 *Եւ առաքեաց եղիսէէ առ ար
քայն Իլի՝ և ասէ. զգո՛յշ լեր. գուցէ
անցանիցես ընդ այն տեղի. զի անդ
թաքուցեալ նստին ասորիքն : 10 *Եւ
առաքեաց արքայն Իլի 'ի տեղին. զոր
ասաց նմա եղիսէէ. և դարանայրոյդ
արար զնա. և զգուշացաւ անտի, ո՛չ
մի անգամ, և ո՛չ երկիցս : 11 *Եւ զայ_
րացաւ անձն արքային ասորւոց վասն
բանին այնորիկ. և կոչեաց զծառայս
իւր՝ և ասէ ցնոսա. ո՞չ պատմէք ինձ.
եթէ ո՛վ մատնէ զիս արքային Իլի :
12 *Եւ ասէ միոմն 'ի ծառայից նր. ոչ ոք
տէ՛ր իմ արքայ. այլ եղիսէէ մարգարէ
Իլի պատմէ արքային իսրայէլի զամ
զբանս քո՝ զոր խօսեսցիս 'ի սենեկի
ննջեքոյ : 13 *Եւ ասէ. երթա՛յք տեսէ՛ք՝
ուր իցէ նա. և առաքեցից՝ ըմբռնե_
ցից զնա. և պատմեցին նմա՝ և ասեն.
աՀաւասիկ 'ի դոթայիմ է : 14 *Եւ առա
քեաց անդ երիվարս՝ և կառս՝ և զօր
զծանր. և եկին 'ի գիշերի. և պատե_
ցին զքաղաքն : 15 *Եւ կանխեաց յառ_
նել 'ի պաշտօն եղիսէէ. և ել և գնաց.
և աՀա զօր պատեալ էր զքաղաքաւն.
և երիվարք՝ և կառք. և ասէ ցնա պա
տանեակն Տր, զի՞ գործեսցուք : 16 *Եւ
ասէ եղիսէէ. մի՛ երկնչիր. զի ընդ մեզ
բազումք են քան ընդ նոսա : 17 *Եւ ե_
կաց յաղօթս եղիսէէ՝ և ասէ. բա՛ց Տր
զաչս պատանեկիս՝ և տեսցէ : և եբաց
Տր զաչս նր՝ և ետես. և աՀա լեառնն
լի էր ձիովք. և Հրեղէն կառօք շուրջ
զեղիսէիւ : 18 *Եւ իջին առ նա. և եկաց
յաղօթս եղիսէէ առ Տր՝ և ասէ. Հա՛ր
զաղգդ զայդ շլացութբ : և եՀար զնս
շլացութբ ըստ բանին եղիսէի : 19 *Եւ
ասէ ցնոսա եղիսէէ. ո՛չ այս ճանա_
պարհ է՝ և ո՛չ այս քաղաք. եկա՛յք զկնի
իմ. և տարայց զձեզ առ այրն, զոր
խնդրէք : և տարաւ զնոսա 'ի սամա_
րիայ : 20 *Եւ եղև իբրև եմուտ 'ի սա_
մարիայ՝ ասէ եղիսէէ. բա՛ց Տր զաչս
նոցա՛ և տեսցեն : և եբաց Տր զաչս նց,
և տեսին. և աՀա էին 'ի մէջ սամա_
րիայ : 21 *Իբրև ետես զնս արքայն Իլի.

ասէ ցեղիսէէ. եթէ Հարկանելով Հա
րի՞ց զդոսա Հա՛յր : 22 *Եւ ասէ՝ մի՛ Հար
կաներ. բայց եթէ զայնոսիկ. զոր գե
րեսցես սրով քով. և աղեղամբ քով
Հարկանիցես. դի՛ր զՀաց և զջուր ա_
ռաջի դոցա. և կերիցեն՝ և արբցեն.
23 և երթիցեն առ տէր իւրեանց : *Եւ
էարկ առաջի նոցա խորտս մակաւ մե_
ծաւ. և կերին՝ և արբին. և արձա_
կեաց զնոսա. և գնացին առ տէր իւր
եանց. և ո՛չ ևս յաւելին մեկնակա_
զէնքն ասորւոց գալ յերկիրն Իլի :
24 *Եւ եղև յետ այնորիկ. և ժողովեաց
որդի ադերայ արքայ ասորւոց զամ
զբանակն իւր. և ելեալ նստաւ զսա_
25 մարեաւ : *Եւ եղև սով մեծ 'ի սա_
մարիայ. և նստէին զնովաւ. մինչև
եղև խալամ իշոյ յիսուն սիկղ արծա
թոյ. և չորրորդ կապճի աղբոյ աղաւ
նեաց յիսուն և Հինգ արծաթոյ :
26 *Եւ արքայ Իլի շրջէր 'ի վր պարս
պին. և կին մի աղաղակեաց առ նա՝
և ասէ. ապրեցո՛ զիս տէր արքայ :
27 *Եւ ասէ. մի՛ ապրեցուսցէ զքեզ Տր.
ուստի՞ ապրեցուցից զքեզ՝ 'ի կալո՞յ
28 թէ 'ի Հնձանէ : *Եւ ասէ ցնա ար_
քայ. զի՞ է քեզ. և ասէ՝ կինս այս ա_
սաց ցիս. տո՛ւր զորդի քո՝ և կերիցուք
զդա այսօր. և զորդիս զիմ կերիցուք
29 առ վաղիւ : *Եւ եփեցաք զորդին
իմ, և կերաք զնա. և ասեմ ցաւուրն
երկրորդի. տո՛ւր զորդիդ քո. և
կերիցուք զդա. և թաքոյց զորդին
30 իւր : *Եւ եղև իբրև լուաւ արքայ
զբանս կնոջն. պատառեաց զՀան_
դերձս իւր. և ինքն շրջէր 'ի վերայ
պարսպին. և ետես ժողովուրդն ըզ
քուրձն. որ 'ի վերայ մարմնոյ նորա 'ի
31 ներքոյ : *Եւ ասէ. ա՛յն և ա՛յն արասցէ
ինձ Տր. և ա՛յն և ա՛յն յաւելցէ, եթէ կաց
ցէ գլուխն եղիսէի որդւոյ սափատայ
32 'ի վերայ նորա այսօր : *Եւ եղիսէէ
նստէր 'ի տան իւրում. և ծերքն նս_
տէին ընդ նմին. և առաքեաց այր ա_
ռաջի երեսաց իւրոց. և մինչև եկեալ
էր Հրեշտակն առ նա՝ ասէ ցծերսն.
եթէ գիտիցէք, զի առաքեաց որդի
սպանողին առնուլ զգլուխ իմ. իբրև
մտանիցէ Հրեշտակն՝ կալջի՛ք զնա ըն
դրօքն. ո՛չ ապաքէն ձայն ոտից տեառն
33 նորա զկնի նորա իցէ : *Եւ մինչ դեռ
խօսէր ընդ նոսա. աՀա Հրեշտակն էջ
առ նոսա՝ և ասէ. աՀա այս չարութի
'ի Տէ է. զի՞ ևս Համբերից Տն :

Գլ : Է :

1 Եւ ասէ եղիսէէ. լո՛ւր զբանն Տն.
այսպէս ասէ Տր. քանզի վաղիւ

այս ժամ, լիցի գրիւ մի նաշհւոյ սկեղ միոյ. և երկու գրիւք գարւոյ սկեղ միոյ 'ի դրունս սամարիայ: 2 * Եւ պատասխանի ետ սպառազէնն. յորոյ արքայ յենոյր 'ի ձեռն նր՛ եղիսէի, և ասէ՝ եթէ սահանս յերկինս արասցէ Տր՛ միթէ լինիցի բանդ այդ: և ասէ եղիսէ. ահա տեսցես աչօք քովք. և անտի մի կերիցես: 3 * Եւ էին արք չորք բորոտք առ դրան քաղաքին. և ասէ այր ցընկեր իւր. զի՞ նստիմք աստ՝ և մեռանիցիմք: 4 * Եթէ ասեմք՝ եթէ մտցուք 'ի քաղաքս՝ սով է 'ի քաղաքին. և մեռանիմք անդ. և եթէ աստէն նստիցիմք՝ սակայն մեռանիմք. և արդ եկայք դիմեսցուք 'ի բանակն ասորւոց. եթէ ապրեցուսցեն զմեզ՝ կեցցուք. և եթէ սպանցեն զմեզ, մեռցուք: 5 * Եւ յարեան ընդ արշալոյսն մտանել 'ի բանակն ասորւոց. և եկին 'ի մասն ինչ բանակին ասորւոց. և ահա ոչ գոյր անդ մարդ: 6 * Զի Տր՛ հնչեցոյց 'ի բանակն ասորւոց շաչիւն կառաց. և բարբառ զօրու մեծի. և ասեն այր ցեղբայր իւր. արդ 'ի վարձու կալաւ 'ի վերայ մեր արքայն իլի զթագաւորս քետացւոց. և զթագաւորս եգիպտացւոց: 7 * Եւ յարեան՝ և փախեան ընդ մութն. և թողին զվրանս իւրեանց՝ և զձիս իւրեանց՝ և զէշս իւրեանց 'ի բանակին՝ որպէս կային. և փախեան մազապուր: 8 * Եւ մտին բորոտքն մինչև 'ի մասն մի բանակին. և մտին 'ի վրան մի. և կերին՝ և արբին. և առին անտի արծաթ և ոսկի և հանդերձս. և գնացին՝ և չոգան, և թաքուցին: և դարձան՝ և մտին յայլ վրան. և առին անտի. և չոգան, և թագուցին: 9 * Եւ ասեն այր ցընկեր իւր. ոչ այսպէս է, զոր մեքս առնեմք. օրս այս օր աւետեաց է. մեք լռիցեմք՝ և մնասցեմք լուսոյ առաւօտու. և գտանիցեմք անօրէնութի՛. բայց արդ եկայք մտցուք. և պատմեսցուք զայս 'ի տուն թագաւորին: 10 * Եւ մտին. և աղաղակեցին առ դրան քաղաքին. և պատմեցին նոցա՝ և ասեն. մտաք 'ի բանակն ասորւոց. և ոչ գոյր անդ այր. և ոչ ձայն մարդոյ. բայց միայն ձիք կապեալք. և էշք կապեալք. և վրանքն նոյնպէս կան: 11 * Եւ աղաղակեցին բարապանքն. և ազդ արարին 'ի տուն թագաւորին 'ի ներքս: 12 * Եւ յարեաւ արքայ գիշերայն. և ասէ ցծառայսն իւր. պատմեցից ձեզ. զոր ինչ արարին մեզ ասորիքն. գիտացին՝ թէ մեք սովիմք. և ելին 'ի բանակէն. և թաքեան 'ի բացի. ասեն՝ թէ ելցեն 'ի քաղաքէն. և ըմբռնեսցուք զնոսա կենդանւոյն. և մտցուք 'ի քաղաքն. և ելցուք: 13 * Եւ պատասխանի ետ միոյ 'ի ծառայիցն նր՛ և ասէ, առցեն հինգ 'ի ձիոց մնացելոց որք մնացեալք են աստէն յամ՛ բազմութե՛ իլի նուաղութե՛ն. և առաքեսցուք անդր. և տեսցուք: 14 * Եւ առին երկուս հեծեալս ձիոց. և առաքեաց արքայ զհետ արքային ասորւոց՝ և ասէ. երթայք՝ և տեսէք: 15 * Եւ գնացին զհետ նց՛ մինչև ցյորդանան. և ահա ամ՛ ճանապարհն լի էր հանդերձիւ՛ և կահիւ՛. զոր ընկեցին ասորիքն 'ի խուճապին իւրեանց. և դարձան հրեշտակքն. և պատմեցին արքային: 16 * Եւ ել ժողովուրդն. և յափշտակեաց զբանակն ասորւոց. և եղև գրիւ նաշհւոյ սկեղ միոյ. և երկու գրիւք գարւոյ սկեղ՝ ըստ բանին Տն՛: 17 * Եւ արքայ կացոյց զսպառազէնն՝ յորոյ յենոյր արքայ 'ի ձեռս նորա. և կոխեաց զնա 'ի խռանն ժողովուրդն առ դրան, և մեռաւ. որպ՛ խօսեցաւ այրն Այ՛. որ խօսեցաւ յիջանել հրեշտակին առ նա: 18 * Եւ եղև որպէս խօսեցաւ եղիսէ ընդ արքային և ասէ. թէ երկու գրիւք գարւոյ սկեղ միոյ լինիցին. և գրիւ նաշհւոյ սկեղ. և եղիցի վաղիւ՛ 'ի սոյն ժամ 'ի դրունս սամարիայ: 19 * Եւ պատասխանի ետ սպառազէնն եղիսէի՝ և ասէ. եթէ սահանս յերկինս արասցէ Տէր. միթէ լինիցի բանդ այդ. 20 * Եւ ասէ եղիսէ. ահա տեսցես աչօք քովք. և անտի մի կերիցես: 21 * Եւ եղև նմա այնպէս. և կոխեաց զնա ժողովուրդն 'ի խռանն առ դրանն. և մեռաւ:

## Գլ: Ը:

1 Եւ խօսեցաւ եղիսէ ընդ կնոջն՝ զորոյ կեցոյց զորդին՝ և ասէ. արի և գնա դու՝ և տունք քո. և լեր պանդուխտ ուր և պանդխտիցիս. զի կոչեաց Տր՛ սով 'ի վերայ երկրիս. քանզի և եկն իսկ եօթն ամ՛ 'ի վր՛ երկրին: 2 * Եւ յարեաւ կինն և արար ըստ բանին եղիսէի. և գնաց ինքն, և տուն իւր. և պանդխտեցաւ յերկիրն այլազգեաց զեօթն ամ: 3 * Եւ եղև յետ կատարելոյ ամացն եօթանց. դարձաւ կինն յայլազգեացն. և եկն բողոք հարկանել առ արքայ վասն տան իւրոյ և վն՛ անդոց իւրոց: 4 * Եւ արքայ՝ խօսեցաւ ընդ գեհեզեայ պատանեկին եղիսէի առնն Այ՛ և ասէ. պատմեա դու ինձ զամ՛ մեծամեծսն. զոր արար եղիսէ: 5 * Եւ եղև 'ի պատմելն նր՛ արքային թէ ո՞րպ՛ կենդանացոյց զորդին զմե-

զմեռեալ։ և աղաչանիւ առաջի ան-
կաւ կնոջն, զորոյ կենդանացոյց զոր-
դին նորա Եղիսէէ. աղաղակէր առ ար-
քայ վասն տան իւրոյ. և վասն անդոց իւր-
ոց ։ և ասէ գեեզի. տէր արքայ. և ասէ,
այս կին է. և այս որդի նորա. զոր կեն-
դանացոյց Եղիսէէ ։ *Եւ եհարց ար 6
քայ ցկինն՝ և պատմեաց նմա ։ և ետ
նմա արքայ ներքինի մի՝ և ասէ. դար-
ձո զամ զամ զարդիւնսն. և զամ զար
մտիս անդոյն. յօրէ յորմէ եթող զեր
կիրն մինչև ցայժմ ։ *Եւ եկն Եղիսէէ 7
'ի դամասկոս. և որդի ադերայ արքայ
ասորւոց հիւանդանայր ։ և պատմե-
ցին նմա՝ և ասեն. եկն այրն Այ այսր։
*Եւ ասէ արքայ ցազայել. առ 'ի ձե- 8
ռին քում մանանա. և եկ ընդ առաջ
առնն Այ. և հարց զՏր նովաւ. և
ասասցես. թէ կեցցեմ 'ի հիւանդու-
թէ աստի խմէ յայսմանէ ։ *Եւ գնաց 9
ազայել ընդ առաջ նորա. և եառ մանանա
'ի ձեռին իւրում. և զամ բարութիս
դամասկոսի. բեռինս ուղտուց քա-
ռասնից ։ չոգաւ՝ և եկաց առաջի նորա
և ասէ. հայր Եղիսէէ. որդի ադերայ
արքայ ասորւոց առաքեաց զիս առ
քեզ՝ և ասէ. եթէ կեցցեմ 'ի հիւան
դութէ աստի խմէ յայսմանէ ։ *Եւ 10
ասէ ցնա Եղիսէէ. երթ՝ և ասա ցնա.
կելով կեցցես. և եցոյց ինձ Տէր. զի
մահու մեռանիցի ։ *Եւ եկաց առա 11
ջի երեսաց նորա պատկառեալ ։ և ելաց
այրն Այ ։ *Եւ ասէ ազայել. ընդէր 12
լաս տէր իմ ։ և ասէ՝ գիտեմ զինչ գոր
ծելոց ես ընդ որդիսն Իղի. զամուրս
նոցա հրձիգ արասցես. և զընտիրս նց
սրով կոտորեսցես. և զտղայս նոցա
սատակեսցես. և զյղիս նց հերձցես ։
*Եւ ասէ ազայել ։ ով է ծառայ քո 13
շուն մի եթէ առնիցէ զբանդ զայդ ։
և ասէ Եղիսէէ. եցոյց ինձ Տր, թա-
գաւորել քեզ 'ի վերայ ասորւոց ։
*Եւ գնաց ազայել՝ և եմուտ առ տէր 14
իւր ։ և ասէ ցնա՝ զինչ ասաց Եղիսէէ ։
և ասէ. ասաց ցիս թէ կելով կեցցէ ։
*Եւ եղև 'ի վաղիւն անդր՝ և էառ 15
մաքման՝ և եթաց 'ի ջուր՝ և էարկ զե
րեսօք՝ և մեռաւ ։ և թագաւորեաց
‖2 Մնա 21.4. ազայել ընդ նորա ։ *‖ Յամի հինգերոր- 16
դի յովրամայ որդւոյ աքաաբու ար-
քայի Իղի, թագաւորեաց յովրամ
որդի յովսափատայ արքայի յուդայ ։
*Որդի երեսուն և երկուց ամաց էր 17
'ի թագաւորել իւրում. և քառասուն
8. ամ ամ թագաւորեաց յեմ։ *Եւ գնաց 18
զճանապարհ թագաւորացն Իղի. ոպ
արար տունն աքաաբու ։ զի դուստր
աքաաբու էր նորա կնութե. և արար

19 չար առաջի Տն ։ ‖ *Եւ ոչ կամեցաւ ‖2 Թագ 7.13.
Տր ապականել զյուդա՝ վասն դաւթի
ծառայի իւրոյ. որպէս և ասաց տալ
նմա ճրագ. և որդւոց նորա զամ աւ
20 ուրս ։ *Եւ յաւուրս նորա նշկահեաց
եդովմ 'ի ներքուստ ձեռին յուդայ. և
թագաւորեցոյց 'ի վր իւր թագաւոր ։
21 *Եւ ել յովրամ 'ի սիոր. և ամենայն 'ի սէիր
կառք ընդ նմա ։ և եղև ընդ վաղայս
րոյցս լինելոյ գիշերւոյն. եհար զեդովմ
զպատեալսն զիւրև՝ զիշխանս կառացն ։
և փախեաւ զօրն յիւրաքանչիւր խո-
22 րանս իւրեանց ։ *Եւ նշկահեաց եդովմ
'ի ներքուստ ձեռին յուդայ մինչև
ցայսօր ։ յայնմ ժամանակի նշկահեաց
23 և ղոբնա ։ *Եւ մնացորդք բանից յով
րամայ և ամ ինչ զոր արար. ոչ աւա-
նիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց
24 թագաւորացն յուդայ ։ *Եւ ննջեաց
յովրամ ընդ հարս իւր. և թաղեցաւ
ընդ հարս իւր՝ 'ի քաղաքին դաւթի
հօր իւրոյ ։ և թագաւորեաց ոքոզիա
25 որդի նորա ընդ նորա ։ *‖ Յամի երկո ‖2 Մնա 22.1.
տասաներորդի յովրամայ որդւոյ ա-
քաաբու արքայի Իղի. թագաւորեաց
ոքոզիա որդի յովրամայ արքայի յու
26 դայ ։ *Որդի քսան և երկուց ամաց էր ո-
քոզիա 'ի թագաւորել իւրում. և տա
րի մի թագաւորեաց յեմ ։ և անուն
մօր նորա գոթողիա դուստր ամրեայ
27 արքայի Իղի ։ *Եւ գնաց զճանապարհ
տանն աքաաբու. և արար զչար առա-
ջի Տն. ոպ և տունն աքաաբու ։ քանզի
28 փեսայ էր տանն աքաաբու ։ *Եւ
գնաց ընդ յովրամայ որդւոյ աքաա-
բու 'ի պատերազմ՝ 'ի վերայ ազայելի
արքայի ասորւոց յռամօթ գաղաադ ։
29 և հարին ասորիքն զյովրամ ։ *Եւ
դարձաւ արքայ յովրամ բժշկիլ 'ի յեզ
րայէլ 'ի վիրացն. զոր խոցեցին զնա
ասորիքն յռամօթ՝ 'ի պատերազմիլ նր
ընդ ազայելի արքայի ասորւոց ։ և ոքո
զիա որդի յովրամայ արքայ յուդայ՝
էջ տեսանել զյովրամ որդի աքաա-
բու յեզրայէլ. զի հիւանդանայր նա ։

## ԳԼ․ Թ․

1 Եւ Եղիսէէ մարգարէ կոչեաց զմի
յորդւոց մարգարէիցն՝ և ասէ.
պնտեա զմէջ քո և առ զսրուակ իւղ
ոյս 'ի ձեռին քում. և երթ յռամօթ
2 գաղաադ ։ *‖ Եւ մտցես անդր. և ‖3 Թագ 19.16.
տեսցես անդ զյէու զորդի յովսափա
տայ որդւոյ ամեսեայ ։ և մտցես. և յա
րուսցես զնա 'ի միջոյ եղբարց իւրոց.
և տարցիս զնա սենեակ 'ի սենեկէ ։
3 *Եւ առցես զսրուակդ իւղոյ. և արկ
ցես 'ի գլուխ նր ։ և ասասցես. այսպէս

ասէ Տր. օծի զքեզ թագաւոր 'ի վր Իղի: և բացցես զդուռնն՝ և փախիցես. և մի՛ մնասցես: 4 *Եւ գնաց պատանեակն մարգարէի յռամօթ գաղաադ: 5 *Եւ եմուտ անդր՝ և ահա իշխանք զօրուն նստէին: և ասէ. բան իմ է ընդ քեզ իշխանդ: և ասէ յէու. առ ո՞ յամենեցունց 'ի մէնջ: և ասէ. առ քեզ իշխանդ: 6 *Եւ յարեաւ՝ և եմուտ 'ի սենեակն. և եարկ զիւղն 'ի գլուխ նորա: և ասէ ցնա. այսպէս ասէ Տէր. օծի զքեզ 'ի թագաւոր 'ի ժողովրդեան Տն 'ի վր Իղի: 7 *Եւ սատակեսցես զտունն աքաաբու տեառն քոյ յերեսաց քոց: Եւ առցես զվրէժ արեան ծառայից իմոց մարգարէից: զարեանց ամ ծառայից Տն 'ի ձեռաց յեզաբելայ. և 'ի ձեռաց ամ տանն Նր: 8 *Եւ սատակեսցես զտունն աքաաբու որ միզիցէ զորմով. և զնեղեալն և զթողեալն յԻղի: 9 *Տաց զտունն աքաաբու իբրև զտունն յերոբովամու որդւոյ նաբատայ. և իբրև զտունն բաասայ որդւոյ աքիայ: 10 *Եւ զեզաբէլ կերիցեն շունք 'ի վիճակին յեզրայէլի. և ոչոք իցէ, որ թաղիցէ: և եբաց զդուռն. և փախեաւ: 11 *Եւ յէու ել առ ծառայս տեառն իւրոյ. և ասեն ցնա, ողջո՞յն է. զի՞ եկն առ քեզ մոլին այն: և ասէ ցնս. դուք ինքնին գիտէք զայրն՝ և զբաջաղանս նորա: 12 *Եւ ասեն ցնա. անիրաւութիւն է այդ. պատմեա՛ մեզ: և ասէ ցնոսա յէու. այսպէս՝ և այսպէս խօսեցաւ ընդ իս՝ և ասէ. այսպէս ասէ Տր. օծի զքեզ թագաւոր 'ի վր Իղի: 13 *Իբրև լուա՛ն՝ փութացան. և առին իւրաքանչիւր զհանդերձս իւր. և եդին 'ի ներքոյ Նր. 'ի վր միոյ աստիճանացն ուր նստէին. և փող հարին եղջերաւն՝ և ասեն. թագաւորեաց յէու: 14 *Եւ զօրաժողով եղև յէու որդի յովսափատայ որդւոյ ամեսեայ 'ի վր յովրամայ: և յովրամ ըզգուշացեալ էր յռամօթ գաղաադ. ինքն և ամ Իղլ, յերեսաց ազայէլի արքայի ասորւոց: 15 *Եւ դարձաւ յովրամ արքայ բժշկիլ յեզրայէլ 'ի վիրաց անտի. զոր խոցեցին զնա ասորիքն՝ 'ի պատերազմիլ նոցա ընդ ազայէլի արքայի ասորւոց: և ասէ յէու. եթէ իցէ ոգի ձեր ընդ իս. մի՛ ելցէ փախստական 'ի քաղաքէ աստի երթալ պատմել յեզրայէլի: 16 *Եւ հեծաւ յէու՝ և գնաց. և էջ 'իյեզրայէլ: զի յովրամ արքայ Իղի բժշկիւր 'ի յեզրայէլ 'ի նետիցն. զոր խոցեցին զնա յռամօթ 'ի պատերազմիլ ը ազայէլի արքայի ասորւոց: (զի նա զօրաւոր էր՝ և այր զօրութե.

3 Թագ. 21.21.
3 Թագ. 15.29.
3 Թագ. 16.3.

և ննջեաց անդ՝) և ոքոզիա արքայ յուդայ էջ տեսանել զյովրամ: 17 *Եւ դէտն ել յաշտարակն յեզրայէլի. և ետես փոշի 'ի գալն յէուայ. և ասէ. փոշի տեսանեմ ես: և ասէ յովրամ. առ հեծեալ մի. և առաքեա՛ ը առաջ Նց. և ասասցէ՝ ողջո՞յն է: 18 *Եւ չոգաւ հեծեալն ձիոյ ընդ առաջ Նր՝ և ասէ. այսպէս ասէ արքայ՝ թէ ողջո՞յն իցէ. և ասէ յէու. զի՞ կայ քո՛ և ողջունի. դարձի՛ր զկնի իմ: և պատմեաց դէտն՝ և ասէ. եհաս 'ի նս հրեշտակն՝ և ո՛չ դարձաւ: 19 *Եւ արձակեաց երկրորդ հեծեալ մի ձիոյ՝ և ասէ. այսպէս ասէ արքայ՝ թէ ողջո՞յն իցէ: և ասէ յէու. զի՞ կայ քո՛ և ողջունի. դարձի՛ր զկնի իմ: 20 *Եւ պատմեաց դէտն՝ և ասէ. եհաս 'ի նոսա. և ո՛չ դարձաւ: և որ ածէրն. էած զյէու զորդին ամեսեայ. քանզի տագնապաւ՛ էհաս: 21 *Եւ ասէ յովրամ. էլ՝ լծեա՛: և լծեցին կառս: և ամբարձ յովրամ արքայ Իղի, և ոքոզիա արքայ յուդայ՝ այր իւրաքանչիւր 'ի կառս իւր. և ելին ընդ առաջ յէուայ: և գտին զնա 'ի վիճակին նաբովթայ յեզրայէլացւոյ: 22 *Եւ եղև իբրև ետես յովրամ զյէու. ասէ. ողջո՞յն է յէու: և ասէ յէու. զի՞նչ ողջոյն է: տակաւին պոռնկութիւնք յեզաբելայ մօրքոյ՝ և կախարդութիւնք նորա յաճախեցին: 23 *Եւ դարձոյց յովրամ զձեռս իւր՝ և փախեաւ. և ասէ ցոքոզիայ. դաւ է՝ ո՛քոզիա: 24 *Եւ ընդ գիրկս եմուտ. և եհար զյովրամ ընդ մէջ թիկանց նորա՝ և ել նետն ընդ սիրտ Նր. և կծկեցաւ 'ի վերայ ծնգաց իւրոց: 25 *Եւ ասէ ցբադեկար սպառազէնն իւր. ընկեա՛ զդա 'ի վիճակ ագարակին նաբովթայ յեզրայէլացւոյ: զի յիշեմ, մինչդեռ ես և դու հեծեալէաք 'ի զոյգս զկնի աքաաբու հօր դորա. և Տր էառ 'ի վր դորա զառածս զայս: 26 *Եթէ ոչ զարիւն նաբովթայ՝ և զարիւն որդւոց նորա. զոր տեսի երէկ՝ ասէ Տր՝ հատուցից նմա 'ի վիճակիս յայսմիկ՝ ասէ Տր: և արդ ա՛ռ ընկեա՛ զդա 'ի վիճակ անդր ըստ բանի Տն: 27 *Եւ ոքոզիա արքայ յուդայ ետես՝ և փախեաւ ընդ ճանապարհ բեթանգանայ: և պնդեցաւ զհետ Նր յէու՝ և ասէ. հա՛պա և զդա ևս: և եհար զնա 'ի կառսն. մինչդեռ ելանէր ընդ զաուիվերն բերայի. որ է յեբղաամ: և փախեաւ 'ի մակեդդով. և անդ մեռաւ: 28 *Եւ հանին զնա ծառայք իւր յէէմ. և թաղեցին զնա 'ի գերեզմանի իւրում ընդ հարս իւրում՝ 'ի քաղաքի դաւթի: 29 *Եւ յամին մետասան

3 Թագ. 21.22.

երորդի

երորդի յովրամայ արքայի Իէլի թագաւորեաց Ոքոզիա ՛ի վերայ յուդայ։ 30 * Եւ եկն յէու յեզրայէլ։ և յեզաբէլ լուաւ. և ծարրեաց զաչս իւր՝ և զարդարեաց զգլուխ իւր՝ և հայէր ընդ պատուհանն։ 31 * Եւ յէու մտանէր ՛ի քաղաքն. և ասէ ‖ ողջո՞յն իցէ զամբրի տէրասպան։ 32 * Եւ ամբարձ զերեսս իւր ՛ի պատուհանն՝ և ասէ. ո՞վ ես դու. էջ առ իս։ և հայեցան ՛ի խոնարհ առ նա երկու ներքինիք։ 33 * Եւ ասէ. ընկեցէք զդա ՛ի խոնարհ։ և ընկեցին զնա։ և ցայտեցաւ յարենէ նորա զորմովն և զձիովքն. և կոխեցին զնա առաթուր։ 34 * Եւ ինքն եմուտ՝ եկեր՝ և էարբ։ և ասէ, տեսէք զանիծեալն զայն՝ և թաղեցէք զնա՝ զի դուստր թագաւորի է։ 35 * Եւ չոգան թաղել զնա. և ոչ ինչ գտին ՛ի նմանէ, բայց զգագաթն՝ և զոտսն՝ և զթաթս ձեռաց։ 36 * Եւ դարձան. և պատմեցին նմա։ ‖ և ասէ. բան Տն է զոր խօսեցաւ ՛ի ձեռն եղիայի Թեզբացւոյ՝ և ասէ. ՛ի վիճակին յեզրայելի կերիցեն շունք զմարմինն յեզաբելայ։ 37 * Եւ եղիցի դին յեզաբելայ իբրև զաղբ ՛ի վերայ երեսաց անդոյ ՛ի վիճակին. զի մի լինիցի ասել նոցա՝ թէ այս է յեզաբել։

3 Թագ. 16. 10.

3 Թագ. 21. 23.

## ԳԼ: Ժ:

1 Եւ աքաաբու էին որդիք եօթանասուն ՛ի սամարիա։ և գրեաց յէու հրովարտակ՝ և առաքեաց ՛ի սամարիա առ իշխանսն սամարիայ՝ և առ ծերս՝ և առ դայեակսն աքաաբու՝ և ասէ։ 2 * Իբրև հասանիցէ առ ձեզ հրովարտակդ այդ. ընդ ձեզ են որդիք տեառն ձերոյ. և ընդ ձեզ կառք՝ և երիվարք՝ և քաղաքք ամուրք՝ և զէն։ 3 * Եւ տեսանիցէք զլաւ, և զուղիղ յորդւոց տեառն ձերոյ. և հաստատիցէք զնա ՛ի վՐ աթոռոյ հօր իւրոյ. և տայցէք պատերազմ ՛ի վերայ տան տեառն ձերոյ։ 4 * Եւ երկեան յոյժ յոյժ. և ասեն. ահա երկու թագաւորքն ոչ կարացին զդէմ նր. և մեք զիա՞րդ ունիցիմք զդէմ։ 5 * Եւ առաքեցին ՛ի տանէն և ՛ի քաղաքէն. և ծերքն և դայեակք առ յէու՝ և ասեն. ծառայք քո եմք մեք. և զորինչ ասիցես մեզ՝ արասցուք. և ո՛չ թագաւորեցուսցուք զոք. այլ որ ինչ բարի է առաջի քո՝ արասցուք։ 6 * Եւ գրեաց առ նս հրովարտակ երկրորդ՝ և ասէ. եթէ իմ էք դուք. և ձայնի իմում լսէք. առէք զգլուխս արանց որդւոց տեառն ձերոյ՝ և բերէք առ իս վաղի՛ւ ՛ի սոյն ժամու ՛ի յեզրայէլ։ և որդիք արքայի էին արք եօթանասունք. և ձիւք քաղաքին սնուցանէին զնոսա։ 7 * Եւ եղև իբրև եհաս հրովարտակն առ նոսա. կալան զորդիս արքային՝ և սպանին արս եօթանասուն. և եդին զգլուխս նց ՛ի կողովս. և առաքեցին առ նա յեզրայէլ։ 8 * Եւ եկն հրեշտակն՝ և պատմեաց. և ասէ. բերին զգլուխս որդւոցն արքայի։ և ասէ. դի՛ք զնս երկուս զռահանս արտաքոյ քաղաքին մինչև յառաւօտ։ 9 * Եւ եղև ընդ առաւօտն. ել՝ և եկաց։ և ասէ ցամ ժողովուրդն. արդա՞ր էք դուք. ահաւասիկ ես յարեայ ՛ի վերայ տեառն իմոյ՝ և սպանի զնա. տեսէք զսոսա ամփոփ ո՞ կոտորեաց։ 10 * Գիտացէք այժմ։ ‖ զի մի անկանիցի ՛ի բանէն Տն յերկիր. զոր խօսեցաւ Տր ՛ի վՐ տանն աքաաբու։ և Տր արար. զորինչ խօսեցաւ ՛ի ձեռն ծառայի իւրոյ եղիայի։ 11 * Եւ եհար յէու զամ մնացեալս ՛ի տանէ աքաաբու ՛ի յեզրայէլ. և զամ մեծամեծս նր. և զծանօթս նր. և զքուրմս նորա. առ ՛ի չթողլոյ նմա մնացորդ։ 12 * Եւ յարեաւ՝ գնաց. և չոգաւ ՛ի սամարիա. և մինչդեռ ՛ի բեթակադ հովուաց ՛ի ճանապարհին էր։ 13 * Եգիտ յէու զեղբարս ոքոզիայ արքայի յուդայ։ և ասէ. ո՞յք էք դուք։ և ասեն. եղբարք ոքոզիայ եմք մեք. և իջաք յողջոյն որդւոց արքայի. և որդւոյ զօրացելոյն։ 14 * Եւ ասէ. կալարո՛ւք զդոսա կենդանիս։ և կալան զնոսա կենդանիս։ և կոտորեցին զնս ՛ի բեթակադ՝ արս քառասուն և երկուս. և ո՛չ մնաց ՛ի նոցանէ այր։ 15 * Եւ գնաց անտի. և եգիտ զյովնադաբ որդի ռեքաբայ ընդ առաջ իւր. և օրհնեաց զնա։ և ասէ ցնա յէու. եթէ իցէ սիրտ քո ուղիղ իբրև զսիրտ իմ, ը սրտի քում։ և ասէ յովնադաբ. է։ և ասէ յէու, եթէ իցէ, տո՛ւր ցիս զձեռն քո։ և ետ զձեռն իւր. և եհան զնա առ իւր ՛ի կառսն։ 16 * Եւ ասէ ցնա. եկ ընդ իս՝ և տես զնախանձ իմ վասն Տն։ և նստոյց զնա ՛ի կառսն իւրում։ 17 * Եւ եմուտ ՛ի սամարիայ. և եհար զամ զմնացորդսն աքաաբու ՛ի սամարիայ. մինչև ապականել նմա զնոսա ըստ բանին Տն. զոր խօսեցաւ ընդ եղիայի։ 18 * ‖ Եւ ժողովեաց յէու զամ ժողովուրդն՝ և ասէ ցնս. աքաաբ ծառայեաց բահաղու սակաւ ինչ. յէու ծառայեսցէ նմա բազում։ 19 * Եւ արդ՝ ամ մարգարէք բահաղու, զամ զծառայս նորա՝ և զքուրմս նր կոչեցէք առ իս. և այր ոք մի վրիպեսցի. զի զոհ մեծ է բահաղու։ և որ վրիպեսցի, մի ապրեսցի.

3 Թագ. 21. 29.

3 Թագ. 16. 31.

և

և յէու արար խաբանօք՝ զի կորուսցէ զծառայս բահաղու ։ 20 Եւ ասէ յէու․ սրբեցէք նուէրս բահաղու ։ և քարոզ կարդացին ։ 21 Եւ առաքեաց յէու ընդ ամ իէլ․ և եկին ամ ծառայք բահաղու․ և ոչ մնաց այր, որ ոչ եկն ։ և մտին 'ի տունն բահաղու․ և լցաւ տունն բահաղու 'ի ծայրէ 'ի ծայր ։ 22 Եւ ասէ յէու ցմխթապետն․ հանէք զպատմուճանս ծառայից բահաղու ։ և հանին զնոցա պատմուճանս ։ 23 Եւ եմուտ յէու՝ և յովնադաբ որդի ռեքաբայ 'ի տունն բահաղու ։ և ասէ ցծառայսն բահաղու ։ որոնեցէք՝ և տեսէք․ եթէ իցէ ոք աստ ը ձեզ 'ի ծառայից Տն ։ բայց դուք միայն ծառայք բահաղու ։ 24 Եւ եմուտ առնել խունկս՝ և ողջակէզս յէու ։ և յէու կացոյց իւր արտաքոյ երեք հարիւր և ութսուն այր․ և ասէ․ այր՝ որ ապրեցուսցէ յարանցն․ զոր ես հանեմ 'ի ձեռս ձեր, անձն նր փոխանակ անձին նորա ։ 25 Եւ եղև իբրև կատարեաց առնել զողջակէզսն, և ասէ յէու ցսուրհանդակսն և ցսպառազէնսն․ մտէք՝ հարէք զնոսա․ և այր մի ելցէ 'ի նոցանէն ։ և հարին զնոսա սրով սուսերի ։ և ընկեցին սուրհանդակքն՝ և սպառազէնքն․ և գնացին մինչև ցքաղաք տանն բահաղու ։ 26 Եւ հանին զարձան տանն բահաղու․ և այրեցին զնա ։ 27 Եւ կործանեցին զարձանս բահաղու՝ և քակեցին զտունն բահաղու․ և կարգեցին զնա 'ի լուէալիս մինչև ցայսօր ։ 28 Եւ ապականեաց յէու զբահաղ յիէլէ ։ 29 Բայց 'ի մեղաց յերոբովամու որդւոյ նաբատայ․ որ յանցոյց զիէլ, ոչ մեկնեցաւ յէու․ յերինջոցն ոսկեաց․ որք 'ի բեթէլ, և 'ի դան ։ 30 Եւ ասէ Տէր ցյէու․ փոխանակ զի քաջացար առնել ուղղութի առաջի իմ, ըստ ամի, և որինչ 'ի սրտի իմում, արարեր տանն աքաաբու․ ‖ որդիք չորրորդք նստցին քեզ յաթոռն իէլի ։

‖ Ա մր․ 15․12․

31 Եւ յէու ոչ զգուշացաւ գնալ յօրէնս Տն Այ իէլի յամ սրտէ իւրմէ․ և ոչ մեկնեցաւ 'ի մեղացն յերոբովամու որ յանցոյց զիէլ ։ 32 Յաւուրսն յայնոսիկ սկսաւ Տր կոտորել յամ սահմանս իէլի․ և եհար զնոսա ազայէլ յամ սահմանս իէլի ։ 33 Յորդանանէ և ընդ արևելս․ զամ զերկիրն զգաղաադ զգադայ՝ և զռուբենի՝ և զմանասէի․ յարոէրայ․ որ է յեզերն հեղեղատին առնոնայ․ և զգաղաադ և զբասան ։ 34 Եւ մնացորդք բանից յէուայ և ամ ինչ զոր արար․ և ամ զօրութի նր՝ և ամ խումբքն զորս խմբեաց․ ո՞չ աւասիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն իէլի ։ 35 Եւ ննջեաց յէու ընդ հարս իւր՝ և թաղեցին զնա 'ի սամարիայ․ և թագաւորեաց յովաքազ որդի նր ընդ նր ։ 36 Եւ աւուրք՝ զորս թագաւորեաց յէու 'ի վր իէլի, ամք քսան և ութն 'ի սամարիայ ։

## Գլ ։ ԺԱ ։

1 Եւ ‖ գոթողիա մայր ոքոզիայ ետես եթէ մեռան որդիք նորա․ կորոյս զամ զաւակ թագաւորութն ։ 2 Եւ էառ յոսաբէէ դուստր արքայի յովրամայ՝ եղբայր ոքոզիայ, զյովաս՝ որդի ոքոզիայ․ և գողացաւ զնա 'ի միջոյ որդւոց արքայի սպանելոցն․ և զդայեակ նորա 'ի սենեկէ անկողնոց․ և թաքոյց զնա յերեսաց գոթողիայ․ և ոչ մեռաւ ։ 3 Եւ էր ընդ նմա 'ի տանն Տն թաքուցեալ ամս վեց ։ և գոթողիա թագաւորեալ էր 'ի վր երկրին ։ 4 Եւ ‖ յամին եօթներորդի առաքեաց յովիադա․ և էառ զհարիւրապետսն վքռւին և զռասիմ․ և էած զնոսա 'ի տուն Տն․ և ուխտեաց նոցա զուխտ Տն․ և եցոյց նոցա յովիադա զորդի արքայի ։ 5 Եւ պատուէր ետ նոցա՝ և ասէ․ այս բանէ, զոր առնիցէք․ երրորդ մասն 'ի ձէնջ մտցէ շաբաթամուտ․ և պահեսջիք զպահպանութի տանն արքունի 'ի դրանն ։ 6 Եւ երրորդ մասն 'ի դրան ճանապարհացն․ և երրորդ մասն 'ի դրան զկնի օժանդակացն՝ պահեսջիք զպահպանութի տանն ։ 7 Եւ երկու ձեռք 'ի ձեզ ։ ամ որ ելանիցէ ը շաբաթամուտն զգուշանալ տանն Տն․ զգուշասցին պահպանութե տանն Տն առ արքայ ։ 8 Եւ պատեսջիք զարքայիւ․ այր, և գործի իւր 'ի ձեռին իւրում ։ և որ մտանիցէ 'ի սադերոթն, մեռցի ։ և իցեն էր ընդ արքայի 'ի մտանել նորա և յելանել նր ։ 9 Եւ արարին հարիւրապետքն՝ զամ․ զոր պատուիրեաց յովիադա իմաստուն ։ և առ նոյր այր զարս իւր․ և զմտօղսն 'ի շաբաթամուտն հանդերձ ելօղօքն 'ի շաբաթամտէն․ և մտանէր առ յովիադայ քահանայ ։ 10 Եւ ետ քահանայն հարիւրապետացն գեղարդունս․ և զբոլանդակ զէնն արքայի դաւթի․ որ կայր 'ի տանն Տն ։ 11 Եւ յարեան օժանդակքն՝ այր՝ և գործի իւր 'ի ձեռին իւրում․ յաջոյ ուսոյ տանն՝ մինչև ցձախոյ ուս տանն․ և սեղանոյն․ և տանն արքունի շուրջանակի ։ 12 Եւ առաքեաց զարքայորդին․ և ետ 'ի վր նր զյազերն՝ և զվկայութի․ և թագաւորեցոյց զնա և եօծ զնա․ և ծափս եհար՝

‖ 2․ Մն․ 22․10․

‖ 2․ Մն․ 23․1․

եհար՝ և ասէ. կեցցէ արքայ : * Եւ 13
լուաւ Գոթողիա զձայն ընթանալոյ
ժողովրդեանն. եմուտ առ ժողովրդն
'ի տունն Տն : * Եւ ետես. և ահա կայր 14
'ի վերայ սեանն՝ ըստ օրինի իւրում, և
երգիչք և փողահարք շուրջ զարքայիւ:
և ամ ժողովուրդ երկրին խնդային.
և փողս հարկանէին փողովք: պատա
ռեաց Գոթողիա զհանդերձս իւր՝ ա
ղաղակեաց՝ և ասէ. դաւ է՝ դաւ է :
* Եւ պատուէր ետ Յովիադա քահա 15
նայ հարիւրապետաց ստահկանաց զօ
րուն՝ և ասէ ցնոսա. հանէք զդա 'ի
ներքուստ սադարօթայդ : և որ մտա
նիցէ զկնի դորա՝ մեռցի սրով. քանզի
ասաց քահանայն թէ մի մեռցի 'ի տան
Տն : * Եւ արկին ձեռն 'ի նա՝ և մտին 16
ընդ ճանապարհ մտից երիվարաց
տանն արքայի՝ և մեռաւ անդ : * Եւ 17
ուխտեաց Յովիադա ուխտ 'ի մէջ Տն՝
և 'ի մէջ արքային՝ և 'ի մէջ ժողովր
դեան, լինել ժողովուրդ Տն : * Եւ 18
եմուտ ամ ժողովուրդ երկրին 'ի
տունն բահաղու. և կործանեցին զնա՝
և զսեղանս նորա. և զպատկերս նորա
խորտակեցին մանր : և զմաթան քր
մապետ բահաղու սպանին յանդիման
սեղանոյն: և եդ քահանայն ստահկանս
'ի տան Տն : * Եւ էառ զհարիւրա 19
պետսն՝ և զքոռին՝ և զռասիմ, և զամ
ժողովուրդ երկրին. և իջուցին զար
քայ 'ի տանէ Տն : և եմուտ ընդ ճա
նապարհ սուրհանդակացն դրան
տանն արքունի : և նստոյց զնա յաթոռ
թագաւորացն : * Եւ ուրախ եղև ամ 20
ժողովուրդ երկրին. և քաղաքն դա
դարեաց : և զԳոթողիա սպանին
սրով 'ի տան արքայի : * Որդի եօթն 21
ամաց Յովաս 'ի թագաւորել իւրում:

## ԳԼ. ԺԲ.

Յամի եօթներորդի Յէուայ թա 1
գաւորեաց Յովաս. և քառասուն
ամ թագաւորեաց յէմ : և անուն
մօր նր սաբիա 'ի բերսաբէէ : * Եւ 2
արար Յովաս ուղղութի առաջի Տն.
զամ աւուրս զորս լուսաւորեաց զնա
Յովիադա քահանայ : * Բայց 'ի բար 3
ձանցն ոչ մեկնեցան. և անդ տակա
ւին զոհէր ժողովուրդն. և արկանէր
խունկս 'ի բարձունս : * Եւ ասէ Յովաս 4
ցքահանայսն. զամ արծաթ սրբու
թեցն մտեալ 'ի տուն Տն՝ արծաթ՝
իւրաքանչիւր առն անցելոյ 'ի համարի
ոգւոց. զամ արծաթ՝ որ անկանիցի 'ի
սիրտ մարդոյ բերել 'ի տուն Տն : * Առ 5
ցեն յիւրեանս քահանայքն. այր իւրա
քանչիւր 'ի վաճառէ իւրեանց. և նք
կազմեսցեն զբեկեալ տանն Տն. յամ
խիք ուր գտանիցի անդ բեկեալ:
6 * Եւ եղև 'ի քսաներորդի և յերրոր
դի ամում Յովասու արքայի, ոչ կազմե
ցին քահանայքն զբեկեալ տանն Տն :
7 * Եւ կոչեաց արքայ Յովաս զՅովիա
դայ քահանայ. և զքահանայսն՝ և ասէ
ցնս. ընդէր ոչ կազմեցիք զբեկեալ
տանն : և արդ մի ևս առնուցուք ար
ծաթ յամ վաճառաց ձերոց. այլ 'ի
8 բեկեալ տանն Տն տայցէք զայն : * Եւ
ուխտեցին քահանայքն չառնուլ ար
ծաթ 'ի ժողովրդենէն. և ոչ կազմել
9 զբեկեալ տանն : * Եւ էառ Յովիադա
քահանայ տապանակ մի և ծակեաց
ծակ 'ի բերան նր. և եդ զնա 'ի կող
մանէ սեղանոյ Տն. և ետուն քահա
նայքն՝ որք պահէին զդրունսն. զամ
10 արծաթ գտեալ 'ի տանն Տն : * Եւ
եղև՝ իբրև ետես եթէ բազում է 'ի
տապանակի անդ. ել դպրապետն ար
քունի՝ և քահանայն մեծ. և պնդեցին
11 զարծաթն գտեալ 'ի տան Տն : * Եւ
ետուն զարծաթն զպատրաստեալն՝
'ի ձեռս գործելեաց զգործս կահի
տանն Տն : և ետուն ցհիւսունս փայ
տից՝ և ցշինօղս՝ գործել 'ի տան Տն :
12 * Եւ ցնկարիչս՝ և ցձարտարս՝ և ցքա
րակոփս քարանցդնել փայտս՝ և քարս
տաշեալս՝ կազմել զբեկեալ տանն Տն.
ամ ինչ յոր ելանիցէ 'ի տունն կազ
13 մել: * Բայց զի մի լինիցին տանն Տն
դրունք արծաթիք՝ բևեռք՝ և տաշտք՝
և փողք: ամ անօթ ոսկի՝ և անօթ ար
ծաթի յարծաթոյ մտելոյ 'ի տուն Տն.
14 * Այլ զի գործունեաց գործոյն տայ
ցեն զայն. և կազմեսցեն զտունն Տն:
15 * Եւ ոչ առնէին համար արանցն. յոր
ոց ձեռս տային զարծաթն տալ գոր
ծաւորաց գործոյն. զի յաւատ գոր
16 ծէին : * Եւ արծաթ վասն մեղաց՝ և
վն յանցանաց՝ ոչ մտանէր 'ի տուն Տն.
17 այլ քահանայիցն լինէր : * Յայնժամ
ել Ազայէլ արքայ ասորւոց. և ետ պա
տերազմ ընդ գեթայ՝ և էառ զնա : և
եդ Ազայէլ զերեսս իւր ելանել 'ի վր
18 եէմի : * Եւ էառ Յովաս արքայ յու
դայ զամ զսրբութիւն՝ զոր սրբեաց
յոսափատ, և յովրամ, և ոքոզիա հարք
նորա՝ և թագաւորք յուդայ. և զիւր
սրբութիւնն. և զամ արծաթ գտեալ
'ի գանձս տան Տն՝ և 'ի տան թագաւո
րին. և առաքեաց Ազայէլի արքայի ա
19 սորւոց՝ և գնաց յեէմէ : * Եւ մնա
ցորդք բանից Յովասու. և ամ ինչ զոր
արար. ոչ ահաւասիկ գրեալ են 'ի գիրս
բանից աւուրց թագաւորացն յու
20 դայ : * Եւ յարեան ծառայքն նր. և
եդին

եղին նմա դաւաճանութիւն. և հարին զյովաս 'ի տան մաաղովնայ բնակեալ 'ի գաղաադ: 21 * Եւ յովզաքար որդի յեմաութայ՝ և յեզեբութ որդի սեմերայ. պատանդք ծառայք նր՝ հարին զնա և սպանին. և թաղեցին զնա ընդ հարս իւր 'ի քաղաքի դաւթի: և թագաւորեաց ամասիա որդի նորա ընդ նորա:

## ԳԼ: ԺԳ:

1 Ի քսաներորդի և երրորդի ամի յովասու որդւոյ ոքոզիայ արքայի յուդայ. թագաւորեաց յովաքազ որդի յէուայ 'ի վերայ իլի 'ի սամարիայ ամս եօթն և տասն: 2 * Եւ արար չար առաջի Տն. և գնաց զհետ մեղացն յերոբովամու որդւոյ նաբատայ՝ որ յանցոյց զիսրայէլ: և ոչ մեկնեցաւ 'ի նոցանէն: 3 * Եւ բարկացաւ սրտմտութբ Տր իլի. և ետ զնս 'ի ձեռս ազայէլի արքայի ասորւոց. և 'ի ձեռս որդւոյ ադերայ որդւոյ ազայէլի զամ աւուրս: 4 * Եւ աղաչեաց յովաքազ զերեսս Տն և լուաւ նմա Տր. և ետես զնեղութի իլի՝ զոր նեղեաց զնս արքայն ասորւոց: 5 * Եւ ետ Տր փրկիչ իլի. և ել 'ի ձեռանէ ասորւոց: և նստան որդիքն իլի 'ի բնակութիս իւրեանց որպէս երեկն և յեռանդն: 6 * Սակայն ոչ մեկնեցան 'ի մեղացն յերոբովամու որդւոյ նաբատայ. որ յանցոյցն զիէլ. այլ 'ի նոսա գնացին: նաև անտառն կայր 'ի սամարիայ: 7 * Եւ ոչ մնաց յովաքազայ զօր. այլ հեծեալք յիսուն՝ և կառք տասն. և տասնհազար հետևակաց: զի կորոյս զնոսա արքայն ասորւոց. և եդ զնոսա իբրև զհող 'ի կոխումն: 8 * Եւ մնացորդք բանից յովաքազու՝ և ամ ինչ զոր արար՝ և զօրութիւնք նորա. ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն իլի: 9 * Եւ ննջեաց յովաքազ ընդ հարս իւր. և թաղեցին զնա ընդ հարս նորա 'ի սամարիայ: և թագաւորեաց յովաս որդի նորա ընդ նր: 10 * Յամի երեսներորդի և եօթներորդի յովասու արքայի յուդայ. թագաւորեաց յովաս որդի յովաքազու 'ի վր իլի 'ի սամարիայ ամս երկոտասան: 11 * Եւ արար չար առաջի Տն. և ոչ մեկնեցաւ յամ մեղացն յերոբովամու որդւոյ նաբատայ՝ որ յանցոյց զիէլ. այլ 'ի նոսա գնաց: 12 * Եւ մնացորդք բանիցն յովասու՝ և ամ ինչ զոր արար. և զօրութիւնք նորա զոր արար ընդ արքային յուդայ. ոչ աւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն իլի: 13 * Եւ ննջեաց յովաս ընդ հարս իւր. և յերոբովամ նստաւ յաթոռ նորա: և թաղեցաւ յովաս 'ի սամարիայ ընդ թագաւորս իլի: 14 * Եւ եղիսէէ հիւանդացաւ հիւանդութի. որով և մեռաւ իսկ: և էջ առ նա յովաս արքայ իլի. և ելաց 'ի վր երեսաց նորա՝ և ասէ. հայր՝ հայր. կառք իլի և հեծեալք նր: 15 * Եւ ասէ ցնա եղիսէէ. առ դու աղեղն քո՝ և զնետ քո: և էառ զաղեղն և զնետս: 16 * Եւ ասէ ցարքայն իլի. մատո ընդ աղեղն ձեռօք քովք: և եմուտ ընդ աղեղն ձեռօք իւրովք: և եդ եղիսէէ զձեռն իւր 'ի վր ձեռաց արքային: 17 * Եւ ասէ. բաց զպատուհանն՝ որ է ընդ արևելս: և եբաց: և ասէ եղիսէէ. ձգեա: և ձգեաց: և ասէ նետ փրկութե Տն. և նետ փրկութե ընդդէմ ասորւոց: և հարցես զասորիս յափէկ մինչև ի սպառ: 18 * Եւ ասէ ցնա եղիսէէ: առ դու քեզ նետս: և էառ: և ասէ ցարքայն իլի: ձգեա և հար զգետին: և եհար արքայ երիցս՝ և եկաց: 19 * Եւ տրտմեցաւ 'ի վերայ նր այրն Այ. և ասէ՝ եթէ հարեալ էիր հնգիցս կամ վեցիցս. յայնժամ հարկանէիր զասորիս մինչև ի սպառ: և արդ երիցս հարցես զասորիս: 20 * Եւ մեռաւ եղիսէէ՝ և թաղեցին զնա: և մեկնակազէնքն մովաբու ելին յերկիրն 'ի գալ տարւոյն: 21 * Եւ եղև թաղել նց զայր մի. և ահա տեսին զմեկնականզէնսն ‖ և ընկեցին զայրն 'ի գերեզմանն եղիսէի: և գնաց՝ և մերձեցաւ յոսկերսն եղիսէի. և կենդանացաւ՝ և կանգնեցաւ 'ի վերայ ոտից իւրոց: 22 * Եւ ազայէլ արքայ ասորւոց նեղեաց 23 զիէլ զամ աւուրս յովաքազու: * Եւ ողորմեցաւ նոցա Տր. և գթացաւ 'ի նոսա՝ և հայեցաւ 'ի նոսա վն ուխտին իւրոյ՝ որ ընդ աբրահամու՝ և ը իսահակայ՝ և ընդ յակոբայ. և ոչ կամեցաւ Տր ապականել զնս. և ոչ ընկէց 24 զնս յերեսաց իւրոց: * Եւ մեռաւ ազայէլ արքայ ասորւոց. և թագաւորեաց որդի ադերայ՝ որդի նր ընդ նր: 25 * Եւ դարձաւ յովաս որդի յովաքազայ. և էառ զքաղաքսն 'ի ձեռաց որդւոյ ադերայ՝ որդւոյ ազայէլի. զորս էառ 'ի ձեռաց յովաքազու հօր նր 'ի պատերազմին: երիցս եհար զնա յովաս՝ և դարձոյց զքաղաքսն իլի:

‖ Սիր. 48. 14.

բենադդ որդի նր

'ի ձեռաց բենադդայ

## ԳԼ: ԺԴ:

1 Յամի երկրորդի յովասայ որդւոյ յովաքազու արքայի իլի ‖ թագաւորեաց ամասիա որդի յովասու 2 թագաւոր յուդայ: * Որդի քսան և հինգ ամաց էր 'ի թագաւորել իւրում.

‖ 2. Մն. 25. 1.

ում. և քսան և ինն ամ թագաւորեաց յեմ: և անուն մօր նորա յովադին յեմէ: 3 *Եւ արար ուղղութիւն առաջի Տն. բայց ոչ որ զդաւիթ հայր իւր: ըստ ամի զոր ինչ արար յովաս հայր իւր՝ արար: 4 *Բայց զբարձունսն ոչ եբարձ: և տակաւին ժողովուրդն զոհէր: և արկանէր խունկս 'ի բարձունս: 5 *Եւ եղև՝ իբրև հաստատեցաւ թագաւորութիւն 'ի ձեռին նր, և եհար զծառայսն իւր՝ որք հարին զարքայ զհայր նր: 6 *Եւ զորդիս սպանողացն ոչ սպան. որպէս և գրեալ է 'ի գիրս օրինացն մովսէսի. զորօրինակ պատուիրեաց Տր՝ և ասէ. ‖ մի՛ մեռցին հարք վն որդւոց. և մի՛ որդիք մեռցին վասն հարց. այլ իւրաքանչիւրոք 'ի մեղս իւր ում մեռցի: 7 *Սա եհար զեդովմ 'ի մայի լոյ տասն հազար. և էառ զվէմն պատերազմաւ. և կոչեաց զանուն նորա յեկթոհէլ մինչև ցայսօր: 8 *Յայնմ ժամանակի առաքեաց ամասիա հրեշտակս առ յովաս որդի յովաքազու որդւոյ յէուայ արքայի իէի՝ և ասէ: եկ յանդիման լիցուք միմեանց երեսօք: 9 *Եւ առաքեաց յովաս արքայ իէի առ ամասիայ արքայ յուդայ՝ և ասէ. ակքանն 'ի լիբանան, յղեաց առ եղևնափայտն որ 'ի լիբանան. և ասէ՝ տուր զդուստր քո որդւոյ իմում կնութեան. և անցին գազանք անտառի՝ որք 'ի լիբանան՝ և կոխեցին զակքանն: 10 *Հարկանելով հարեր զեդովմ. և հպարտացոյց զքեզ սիրտ քո: մեծարեա՛յ՝ և նի՛ստ 'ի տան քում. ընդէ՞ր գրգռես զքեզ չարութիւն քո: և անկանիցիս դու և յուդա ընդ քեզ: 11 *Եւ ոչ անսաց ամասիա: և ել յովաս արքայ իէի՝ և երևեցան երեսօք. ինքն և ամասիա արքայ յուդայ 'ի բեթսամիւս հրէաստանի: 12 *Եւ պարտեցաւ յուդա յերեսաց իէի. և փախեաւ այր իւրաքանչ իւր 'ի բնակութիւն իւր: 13 *Եւ զամասիա զարքայ յուդայ՝ զորդի յովասու որդւոյ ոքոզիայ՝ կալաւ յովաս որդի յովաքազու արքայ իէի 'ի բեթսամիւս՝ և եկն յեմ: և եհատ զպարիսպն եմի 'ի դրանէ եփրեմի մինչև ցդուռն անկեանց՝ չորեքհարիւր կանգուն: 14 *Եւ էառ զոսկի՝ և զարծաթ՝ և զամ անօթս գտեալ 'ի տան Տն. և 'ի գանձս տան թագաւորին. և զորդիս խառնակութեան. և դարձաւ 'ի սամարիա: 15 *Եւ մնացորդք բանից յովասու՝ և որ ինչ արար զօրութբ իւրով. և պատերազմն՝ զոր պատերազմեցաւ ընդ ամասեայ արքայի յուդայ, ոչ ահանիկ գրեալ են 'ի գիրս

բան

բանից աւուրց թագաւորացն իէի: 16 *Եւ ննջեաց յովաս ընդ հարս իւր: և թաղեցաւ 'ի սամարիա ընդ թագաւորս իէի: և թագաւորեաց յերոբովամ որդի նորա ընդ նր: 17 *Եւ եկեաց ամասիա՝ որդի յովասու՝ արքայ յուդայ՝ յետ մահուանն յովասու որդւոյ յովաքազու թագաւորի իէի՝ ամս հնգետասան: 18 *Եւ մնացորդք բանից ամասեայ՝ և ամ ինչ զոր արար. ո՞չ ահանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ: 19 *Եւ գումարեցան 'ի վերայ նորա դունդք յեմ. և փախեաւ 'ի լաքիս՝ և առաքեցին զկնի նր 'ի լաքիս՝ և սպանին զնա անդ: 20 *Եւ բարձին զնա ձիովք՝ և թաղեցաւ յեմ՝ ընդ հարս իւր 'ի քաղաքի դաւթի: 21 * ‖ Եւ էառ ամ ժողովուրդն յուդայ զազարիա. և նա էր ամաց վեշտասանից. և թագաւորեցուցին զնա փոխանակ հօր իւրոյ ամասեայ: 22 *Նա շինեաց զեղովթ: և դարձոյց զնա անդրէն 'ի յուդայ յետ ննջելոյ արքայի ընդ հարս իւր: 23 *Յամի հնգետասաներորդի ամասեայ՝ որդւոյ յովասու արքայի յուդայ. թագաւորեաց յերոբովամ որդի յովասու արքայի իէի 'ի վերայ իէի 'ի սամարիա՝ ամս քառասուն և մի: 24 *Եւ արար չար առաջի Տն: և ոչ մեկնեցաւ յամ մեղաց յերոբովամու որդւոյ նաբատայ՝ որ յանցոյց զիէլ: 25 *Նա մերժեաց զսահմանս իսրայէլի 'ի մտից եմաթայ մինչև ցծովն արաբայ ըստ բանի Տն Այ իէի՝ զոր խօսեցաւ 'ի ձեռն ծառայի իւրոյ ‖ յովնանու որդւոյ ամաթեայ մարգարէի 'ի գեթայ աքոբերայ: 26 *Զի ետես Տէր զտառապանս իէի զյոյժ դառնութե. և սակաւաւորս՝ և նեղեալս՝ և անօսրացեալս՝ և լքեալս՝ և ոչոք էր՝ որ օգնէր իէի: 27 *Եւ ոչ խօսեցաւ Տր ջնջել զզաւակ իսրայէլի 'ի ներքոյ երկնից: և փրկեաց զնս Տր 'ի ձեռաց յերոբովամայ որդւոյ յովասու: 28 *Եւ մնացորդք բանից յերոբովամայ. և ամ ինչ զոր արար. և զօրութիւնք նր զոր պատերազմեցաւ. և որպ դարձոյց զդամասկոս՝ և զեմաթ անդրէն առ յուդայ յիէլ: ոչ ահանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն իէի: 29 *Եւ ննջեաց յերոբովամ ընդ հարս իւր՝ ընդ թագաւորս իէի. և թագաւորեաց ազարիա որդի ամասեայ փոխանակ հօր իւրոյ:

Բ.Օրէ 24.16. Եզեկ. 18.20.

‖ Բ.Մն 26.1.

Նա դարձոյց

‖ Յովն 1.1.

'Ի չետ

## ԳԼ: ԺԵ։

1 Յամի քսաներորդի և եօթներորդի յերոբովամայ արքային Իղի, թագաւորեաց ազարիա որդի ամասեայ արքային յուդայ։ 2 *Որդի վեշտասան ամաց էր 'ի թագաւորել իւրում. և յիսուն և երկու ամ թագաւորեաց յէմ։ և անուն մօր նորա յեքելիա յէմէ։ 3 *Եւ արար բարի առաջի Տն. ըստ ամի զոր արար ամասիա հայր նր։ 4 *Բայց 'ի բարձանցն զոր ոչ եբարձ։ և տակաւին ժողովուրդն զոհէր. և արկանէր խունկս 'ի բարձունս։ 5 *Եւ եհարկ Տր ձեռն 'ի թագաւորն, և էր բորոտեալ մինչև ցօր մահուան իւրոյ. և նստէր 'ի տան ափփուսովթ։ և յովաթամ որդի արքային էր 'ի վերայ տանն դատել զժողովուրդ երկրին։ 6 *Եւ մնացորդք բանից ազարիայ. և ամ ինչ զոր արար. ոչ ահաւասիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ։ 7 *Եւ ննջեաց ազարիա ընդ հարս իւր. և թաղեցին զնա առ հարս իւր 'ի քաղաքին դաւթի։ և թագաւորեաց յովաթամ որդի նր ընդ նորա։

8 *Յամի երեսներորդի և ութերորդի ազարիայ արքային յուդայ՝ թագաւորեաց զաքարիա որդի յերոբովամայ 'ի վր Իղի 'ի սամարիայ ամիս վեց։ 9 *Եւ արար չար առաջի Տն. որպէս արարին հարքն նր. և ոչ մեկնեցան 'ի մեղացն յերոբովամու որդւոյ նաբատայ՝ որ յանցոյցն զԻղ։ 10 *Եւ գումարեցան 'ի վր նր սեղղում որդի աբիսայ. և կեբդամ. և հարին զնա յանդիման ժողովրդեանն. և սպանին զնա։ և թագաւորեաց սեղղում ընդ նորա։ 11 *Եւ մնացորդք բանից զաքարիայ ահա գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն Իղի։ 12 *Բան յոր բան Տն զոր խօսեցաւ առ յէու՝ և ասէ. որդիք չորրորդք նստցին քեզ յաթոռն Իղի. և եղև այնպէս։

13 *Եւ սեղղում որդի աբիսայ թագաւորեաց յամի երեսներորդի իններորդի ազարիայ արքային յուդայ։ և թագաւորեաց սեղղում ամսօրեայ մի աւուրց 'ի սամարիայ։ 14 *Եւ ել մանայեմ որդի գադդեայ 'ի թերսիղայ. և եմուտ 'ի սամարիայ. և եհար զսեղղում զորդի աբիսայ 'ի սամարիայ. և սպան զնա. և թագաւորեաց ընդ նր։ 15 *Եւ մնացորդք բանից սեղղումայ. և գումարութիւնք նր զոր գումարեցաւ. ահաւասիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն Իղի։ 16 *Յայնժամ ժամանակի եհար մանայեմ զթերսայ՝ և զամ ինչ որ 'ի նմա. և զսահմանս նր 'ի թերսայէ. քանզի ոչ բացին նմա։ և եհար զնա. և զյղիս նր պատառեաց։

17 *Յամի երեսներորդի և իններորդի ազարիայ արքային յուդայ. թագաւորեաց մանայեմ որդի գադդայ 'ի վր Իղի 'ի սամարիայ ամս տասն։ 18 *Եւ արար չար առաջի Տն. և ոչ մեկնեցաւ յամ մեղացն յերոբովամու որդւոյ նաբատայ՝ որ յանցոյցն զԻղ մեղօք իւրովք։ 19 *Եւ ել փուա արքայ ասորեստանեայց 'ի վր երկրին։ և մանայեմ ետ փուայ հազար տաղանդ արծաթոյ՝ լինել ձեռն իւր նր ընդ նմա. հաստատել զթագաւորութիւն 'ի ձեռին նր։ 20 *Եւ եհարկ մանայեմ զարծաթն 'ի վր Իղի. 'ի վր ամ զօրաւորի զօրութե՝ տալ արքային ասորեստանեայց յիսուն սիկղ արծաթոյ առ այր մի. և դարձաւ արքայն ասորեստանեայց. և ոչ եկաց յերկրին։ 21 *Եւ մնացորդք բանից մանայեմայ. և ամ ինչ զոր արար. ոչ ահաւասիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն Իղի։ 22 *Եւ ննջեաց մանայեմ ը հարս իւր։ և թագաւորեաց փակէէ որդի նր ընդ նր։

23 *Յամի յիսներորդի ազարիայ արքային յուդայ. թագաւորեաց փակէէ 'ի վր Իղի 'ի սամարիայ ամս տասն։ 24 *Եւ արար չար առաջի Տն. և ոչ մեկնեցաւ 'ի մեղացն յերոբովամու որդւոյ նաբատայ՝ որ յանցոյցն զԻղ։ 25 *Եւ գումարեցաւ 'ի վր նորա փակէէ որդի ռոմելայ սպառազէն իւր՝ և եհար զնա 'ի սամարիայ առաջի տանն արքային։ և ընդ նմա արգովբ. և ընդ նմա արիէ. և ընդ նմա յիսուն այր 'ի չորեքհարիւրոցն։ և սպան զնա և թագաւորեաց ընդ նր։ 26 *Եւ մնացորդք բանիցն փակեայ. և ամ ինչ զոր արար՝ ահա գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն Իղի։

27 *Յամի յիսներորդի և երկրորդի ազարիայ արքային յուդայ թագաւորեաց փակէէ որդի ռոմելայ 'ի վր Իղի 'ի սամարիայ ամս քսան։ 28 *Եւ արար չար առաջի Տն. և ոչ մեկնեցաւ յամ մեղացն յերոբովամայ որդւոյ նաբատայ. որ յանցոյցն զԻղ։ 29 *Յաւուրս փակէի արքային Իղի եկն թագղաթ փաղասար արքայ ասորեստանեայց. և էառ զայիոն և զկաբէլ. և զբեթմաաք. և զյանովք. և զկենեզ. զասովր. և զգաղաադ. և զգալիլեայ. և զամ երկիրն նեփթաղիմայ. և խաղացոյց զնս յասորեստան։ 30 *Եւ գումարեաց գունդ ովսէէ որդի ելայի 'ի վր փակէի որդւոյ ռոմելայ՝ և եհար զնա՝ և սպան զնա.

Ա2.Մնա 26.21.

Ա Մէր. 10.30.

զնա. և թագաւորեաց ընդ նր̃. յամի քսաներորդի յովաթամայ որդւոյ ոզիայ։ 31 *Եւ մնացորդք բանից փակէի և ամ̃ ինչ զոր արար. ահաւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն իղի։ 32 *Յամի երկրորդի փակէի որդւոյ ռոմելայ թագաւորի իղի. թագաւորեաց յովաթամ որդի ոզիայ արքայի յուդայ։ 33 *Որդի քսան և հինգ ամաց էր 'ի թագաւորել իւրում. և վեշտասան ամ թագաւորեաց յեմ̃։ և անուն մօր նր̃ յերուսայ. դուստր սադովկայ։ 34 *Եւ արար ուղղութի առաջի Տն̃ ըստ ամ̃ զոր արար ոզիա հայր նորա։ 35 *Բայց 'ի բարձանցն զոր ոչ եբարձ. և տակաւին ժողովուրդն զոհէր. և արկանէր խունկս 'ի բարձունսն։ նա շինեաց զդուռն տանն Տն̃ զվերին։ 36 *Եւ մնացորդք բանից յովաթամայ՝ և ամ̃ ինչ զոր արար. ո՞չ ահաւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ։ 37 *Յաւուրսն յայնոսիկ սկսաւ Տր̃ առաքել զռասոն արքայ ասորւոց. և զփակէէ որդի ռոմելայ։ 38 *Եւ ննջեաց յովաթամ ընդ հարս իւր. և թաղեցաւ ընդ հարս իւր 'ի քաղաքին դաւթի հօր իւրոյ. և թագաւորեաց աքազ որդի նորա ընդ նորա։

## ԳԼ: ԺԶ:

1 Յամի եօթնուտասներորդի փակէի որդւոյ ռոմելայ թագաւորեաց աքազ որդի յովաթամայ։ 2 *Որդի ամաց քսանևհնգից էր արքայ աքազ 'ի թագաւորել իւրում. և վեշտասան ամ թագաւորեաց յեմ̃. և ոչ արար ուղղութի առաջի Տն̃ Այ̃ հաւատարմութե̃ իբրև զդաւիթ զհայր իւր։ 3 *Եւ գնաց զճանապարհ յերոբովամայ որդւոյ նաբատայ արքայի իղի. նաև զորդին իւր անցոյց ընդ հուր՝ ըստ գարշութեց ազգացն. զորս եբարձ Տր̃ յերեսաց որդւոցն իղի։ 4 *Եւ զոհէր՝ և արկանէր խունկս 'ի բարձունսն՝ և 'ի վր̃ բլրոց, և 'ի ներքոյ ամենատուախիտ ծառոց։ 5 *Յայնժամ ել ռասոն արքայ ասորւոց՝ և փակէէ որդի ռոմելի արքայ իղի յերուսաղէմ 'ի պատերազմ, և պաշարէին զնա 'ի վերայ աքազու. և ոչ կարէին պատերազմիլ։ 6 *'Ի ժամանակին յայնմիկ դարձոյց ռասոն արքայ ասորւոց զայլաթ յասորիս. և եհան զհրէայսն յայլաթայ. և եկին եդոմայեցիք յայլաթ՝ և բնակեցան անդ մինչև ցայսօր։ 7 *Եւ առաքեաց աքազ հրեշտակս առ թագղաթփաղասար արքայ ասորեստանեայց՝ և ասէ. ծառայ քո՝ և որդի քո եմ ես՝ ել. և փրկեա զիս 'ի ձեռաց արքային ասորւոց. և 'ի ձեռաց արքային իղի յարուցելոց 'ի վերայ իմ։ 8 *Եւ էառ աքազ զարծաթ և զոսկի զգտեալ 'ի գանձս տանն Տն̃՝ և 'ի տանն թագաւորին. և առաքեաց արքային ասորեստանեայց պատարագս։ 9 *Եւ լուաւ նմա արքայն ասորեստանեայց. և ել արքայն ասորեստանեայց 'ի դամասկոս. և էառ զնա. և վարեաց զնա 'ի գերութիւն 'ի կիւրէն. և զռասոն սպան։ 10 *Եւ չոգաւ արքայ աքազ ընդ առաջ թագղաթփաղասարայ արքայի ասորեստանեայց 'ի դամասկոս. և ետես զսեղանն որ 'ի դամասկոս. և առաքեաց արքայ աքազ առ ուրիայ քահանայ զնմանութիւն սեղանոյն, և զձև նր̃. ըստ ամ̃ գործուածոյն նր̃։ 11 *Եւ շինեաց ուրիա քահանայ զսեղանն՝ ըստ ամ̃ի՝ որպէս առաքեաց արքայ աքազ 'ի դամասկոսէ. նոյնպէս արար ուրիա քահանայ մինչև 'ի գալ արքայի աքազու 'ի դամասկոսէ։ 12 *Եւ ետես զսեղանն. և մատեաւ արքայ 'ի սեղանն. ել 'ի վեր. և ճենճերեաց զողջակէզսն իւր՝ և զզոհսն։ 13 *Եւ նուիրեաց զնուէրս իւր. և եհեղ զարիւն խաղաղականաց իւրոց։ 14 *Եւ զսեղանն պղնձի, որ կայր առաջի Տն̃, փոխեաց յերեսաց տանն Տն̃ 'ի տեղւոջէ իւրմէ. և եդ զնա 'ի կողմանէ սեղանոյն ընդ հիւսիսի։ 15 *Եւ պատուէր ետ արքայ աքազ ուրիայ քահանայի՝ և ասէ. 'ի վերայ մեծի սեղանոյդ մատուցանիցես զողջակէզս առաւօտինս. և զզոհս երեկոյինս. և զողջակէզս արքայի՝ և զզոհս նր̃. և զողջակէզս ժողովրդեան երկրիս. և զզոհս նց̃. և զնուէրս նց̃. և զամ̃ զարիւն ողջակիզաց. և զամ̃ զարիւն զոհից 'ի վր̃ նր̃ հեղուցուս. բայց սեղանն պղնձի եղիցի ինձ յառաւօտինս։ 16 *Եւ արար ուրիա քահանայ ըստ ամ̃ի. որպ̃ պատուիրեաց նմա արքայ աքազ։ 17 *Եւ կոտորեաց արքայ աքազ զաղխս մեքենովթացն. և փոխեաց 'ի նոցանէ զաւազանսն. և զծովն իջոյց 'ի ցլուցն պղնձեաց երկոտասանեցունց. որք 'ի ներքոյ նր̃. և եդ զնա 'ի վերայ քարեղէն խարսխի։ 18 *Եւ զհիմն աթոռոյն շինեաց 'ի տանն Տն̃. և զմուտ թագաւորին զարտաքին դարձոյց 'ի տունն Տն̃. յերեսաց արքային ասորեստանեայց։ 19 *Եւ մնացորդք բանից աքազու՝ զոր արար. ո՞չ ահաւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ։ 20 *Եւ ննջեաց աքազ ընդ հարս իւր. և

թաղեցաւ ընդ հարս իւր 'ի քաղաքի դաւթի. և թագաւորեաց եզեկիա որդի նորա ընդ նորա։

## ԳԼ. ԺԷ.

1 Յամի երկոտասաներորդի աքազու արքայի յուդայ. թագաւորեաց ովսէէ որդի Ելայի 'ի վր Իլի 'ի սամարիայ ամս ինն։ 2 * Եւ արար չար առաջի Տն. բայց ոչ իբրև զթագաւորսն Իլի. որք էին յառաջ քան զնա։ 3 *‖ Ի վերայ նր ել սաղմանասար արքայ ասորեստանեայց. և եղև նմա ովսէէ ծառայ. և տայր տանել նմա մանանայ։

‖ Ա այր. 18.9. Տոբ. 1. 2.

4 * Եւ եգիտ արքայ ասորեստանեայց յովսէէ վնաս. զի առաքեաց հրեշտակս առ սովա արքայ եգիպտացւոց. և ոչ ետ մաննա արքային ասորեստանեայց 'ի տարւոջն յայնմիկ. և պաշարեաց զնա արքայն ասորեստանեայց. և կապեաց զնա 'ի տան բանտի։ 5 * Եւ ել արքայն ասորեստանեայց յամ երկիրն. ել և 'ի սամարիայ. և պաշարեաց զնա ամս երիս։ 6 *‖ Յամին իններորդի ովսեայ՝ էառ արքայ ասորեստանեայց զսամարիայ. և խաղացոյց զիէլ յասորեստանեայս. և բնակեցոյց զնոսա 'ի յաղաթ. և աբովր. գետոյն գոզանայ. և զլերամբքն մարաց։

‖ Ա այր. 18.10.

7 * Եւ եղև իբրև մեղան որդիքն Իլի Տն Ա.Ծ իւրեանց. որ եհան զնոսա յերկրէն եգիպտացւոց՝ 'ի ձեռաց փարաւոնի արքայի եգիպտացւոց. և երկեան յաստուծոց օտարաց։ 8 * Եւ գնացին ըստ կրօնից ազգացն. զորս եբարձ Տր յերեսաց որդւոցն Իլի. և թագաւորքն Իլի որչափ ինչ արարին։ 9 * Եւ որչափ ինչ պաճուճեցին որդիքն Իլի բանս, ոչ այնպէս ինչ զՏէ Ա.Ծ իւրեանց. և շինեցին իւրեանց բարձունս յամ քաղաքս իւրեանց. յաշտարակէ պահապանացն մինչև 'ի քաղաքն ամուր։ 10 * Եւ կանգնեցին իւրեանց արձանս. և անտառս. յամ բլուրս բարձունս. և 'ի ներքոյ ամ անտառախիտ ծառոց։ 11 * Եւ արկանէին խունկս յամ բարձունս. իբրև զամ ազգսն. զորս մերժեաց Տր յերեսաց նոցա. արարին զոլորս. և ընկերշակեցին առ 'ի բարկացուցանել զՏր։ 12 * Եւ պաշտեցին զկուռս. որ ոչ ասաց նց Տէր. եթէ մի առնիցէք զբանդ զայդ Տն։

ղորոյ

13 * Եւ ետ վկայութի Տր ընդ Իլի՝ և ընդ յուդայ՝ 'ի ձեռն ամ մարգարէից իւրոց. և ամ տեսանողաց՝ և ասէ. ‖ դարձարուք 'ի ճանապարհաց ձերոց չարաց. և պահեցէք զպատուիրանս իմ. և զիրաւունս իմ. և զամ օրէնս. զորս պատուիրեցի հարց ձերոց. զորս առաքեցի առ ձեզ 'ի ձեռն ծառայից իմոց մարգարէից։

‖ Երեմ. 25.5.

14 * Եւ ոչ լուան նոցա. և խստացուցին զողն իւրեանց քան զողն հարց իւրեանց. և ոչ հաւատացին 'ի Տր Ա.Ծ իւրեանց։ 15 * Եւ ընկեցին 'ի բաց զհաստատութիս իւրեանց. և զդաշինսն, զոր կռեաց ընդ հարս նց. և զվկայութիս նորա. զորս ուխտեաց նց, ոչ պահեցին. և գնացին զհետ սնոտեաց. և սնոտեցան զհետ ազգացն. որք շուրջ զնոքօք. յորոց պատուիրեաց նոցա Տր չառնել ըստ նմին օրինակի։

ղորոյ

16 * Թողին զամ պատուիրանսն Տն Ա.Ծ իւրեանց. և արարին իւրեանց ձուլածոյս երկուս երինջս. և երկիր պագին զօրութե երկնից. և պաշտեցին զբահաղ։ 17 * Եւ անցուցին զուստերս և զդստերս իւրեանց ընդ հուր. և դիւթեցին դիւթութիս. և հմայեցին հմայս. և համարձակեցան առնել չար առաջի Տն առ 'ի բարկացուցանելոյ զնա։ 18 * Եւ բարկացաւ Տր յոյժ Իլի. և մերժեաց զնս յերեսաց իւրոց. և ոչ մնաց. բայց միայն ցեղն յուդայ։ 19 * Սակայն և յուդայ ոչ պահեցին զպատուիրանս Տն Ա.Ծ իւրեանց. և գնացին ըստ կրօնիցն Իլի՝ զորս արարին։ 20 * Եւ մերժեցին զՏր յամ զաւակէն Իլի. և շարժեաց զնոսա՝ և ետ զնոսա 'ի ձեռս աւարառուաց իւրեանց. մինչև ընկէց զնոսա յերեսաց իւրոց։

և մերժ- եաց տէր զամ զա- ւակէ

21 *‖ Սակայն ինէլ առ տամբն իւրոյ դաւթի թագաւորեցոյց զյերոբովամ որդի նաբատայ. և մերժեաց յերոբովամ զԻէլ 'ի գնացից Տն. 22 և մեղոյց զնս մեղս մեծամեծս։ * Եւ արարին որդիքն Իլի ըստ ամ մեղաց յերոբովամու՝ զորս արար. և ոչ մերժեցան 'ի նոցանէն։

‖ 3 Թագ. 12.19.

23 *‖ Մինչև փոխեաց Տր զԻէլ յերեսաց իւրոց. որպ խօսեցաւ Տէր 'ի ձեռն ամ ծառայից իւրոց մարգարէից. և վարեցաւ Իէլ յերկրէ իւրմէ յասորեստանեայս մինչև ցայսօր։

‖ Երեմ. 25.9.

24 * Եւ էած արքայն ասորեստանեայց 'ի բաբելոնէ. և 'ի քութայ. և յայայ. և յեմաթայ. և 'ի սեփփարուիմայ. և բնակեցան 'ի քաղաքս սամարիայ փոխանակ որդւոցն Իլի՝ և ժառանգեցին զսամարիայ. և բնակեցան 'ի քաղաքս նորա։ 25 * Եւ եղև 'ի սկզբան բնակութեյ նց անդ. ոչ երկեան 'ի Տէ. և առաքեաց Տր առիւծս. և կոտորէին զնս։ 26 * Եւ խօսեցան ընդ արքային ասորեստանեայց՝ և ասեն. ազգսն զոր փոխեցեր. և նստան փոխանակաւ 'ի քաղաքս սամարիայ, ոչ գիտեն զկրօնս Ա.Ծ երկրին. և առաքեաց

Տր

Տր 'ի նոսա առիւծս. և ահա կոտորեն զնոսա. քանզի ոչ գիտեն զկրօնս Ա.Ծ երկրին: 27 *Եւ հրամայեաց արքայն ասորեստանեայց՝ և ասէ. տարայք անդր զմիոջ 'ի քահանայից գերելոց անտի՝ զի երթեալ բնակեսցի անդ՝ և ցուցցէ զկրօնս Ա.Ծ. և լուսաւորեսցէ զնս խրատամբք Ա.Ծ երկրին: 28 *Եւ տարան զմի 'ի քահանայից. զոր գերեցին 'ի սամարիայ. և նստաւ 'ի բեթէլ. և լուսաւորէր զնոսա. զի երկնչիցին 'ի Տէ: 29 *Եւ արարին ազգք ազգք աստուածս իւրեանց. և եդին 'ի տունս բարձանցն՝ զորս արարին սամարացիքն՝ իւրաքանչիւր ազգքն 'ի քաղաքս իւրեանց. յորս ինքեանք բնակէին: 30 *Եւ արք բաբելոնի արարին զսաքքովթ՝ և զբանովթ. և արք քութայ արարին զանգեղ. և արք եմաթայ արարին զասիմաթ: 31 *Եւ այխացիք արարին զաբեղազեր. և զնեբաս. և զթարթակ. և զսեփփարուէիմ. ուր այրէին զորդիս իւրեանց 'ի հուր՝ ադրամելէքեայ. և ամամելէքայ՝ աստուծոց սեփփարուէիմայ: 32 *Եւ երկնչէին 'ի Տէ. և բնակեցուցին զգարշելիսն իւրեանց 'ի տունս բարձանցն. զորս արարին 'ի սամարիայ իւրաքանչիւր ազգ ազգ յորում բնակէին. և երկնչէին 'ի Տէ՝ և արարին իւրեանց քուրմս բարձանց: 33 *Եւ երկնչէին 'ի Տէ. և պաշտէին զաստուածսն իւրեանց ըստ կրօնից ազգացն՝ զորս Ա.Ծ մերժեաց անտի: 34 *Եւ մինչև ցայսօր առնէին նոքա ըստ կրօնից նոցա. և երկնչէին 'ի Տէ. և առնէին ըստ կրօնից նց. և ըստ պատուիրանաց նց՝ և ըստ օրինաց: և ոչ ըստ պատուիրանին զոր պատուիրեաց Տր որդւոցն յակոբայ ‖ որում եդ անուն իէլ: 35 *Եւ ուխտեաց Տր ուխտ՝ և պատուիրեաց նոցա և ասէ. մի երկնչիցիք յաստուծոց օտարաց. և մի երկիր պագանիցէք նոցա. և մի պաշտիցէք զնս. և մի զոհիցէք նոցա: 36 *Այլ զՏն Ա.Ծ՝ որ եհան զձեզ յերկրէն եգիպտացւոց մեծաւ զօրութբ և բազկաւ բարձր. 'ի նմանէ երկնչիցիք. և նմա երկիր պագանիցէք. և նմա զոհիցէք: 37 *Եւ իրաւանց՝ և դատաստանաց՝ և օրինաց, և պատուիրանացն՝ զորս գրեաց ձեզ, զգուշանայցէք առնել. և մի երկնչիցիք յաստուծոց օտարաց: 38 *Եւ զուխտն՝ զոր ուխտեաց ընդ ձեզ՝ մի ցրիցէք. և մի երկնչիցիք յաստուծոց օտարաց: 39 *Այլ 'ի Տէ Ա.Ծ ձերմէ երկնչիցիք. և նա փրկեսցէ զձեզ յամենայն թշնամեաց ձերոց: 40 *Եւ մի ունկնդիր լինիցիք կրօնից նց. զորս նք առնիցեն: 41 *Եւ երկնչէին ազգքն այնոքիկ 'ի Տէ: և դրօշելոց իւրեանց ծառայէին. և որդիք նց. և որդւոց որդիք նոցա. որպէս արարին հարք իւրեանց, առնեն մինչև ցայսօր:

[Ծնն. 32.28.]

## Գ Լ : Ժ Ը :

1 Եւ եղև յամին երրորդի ‖ ովսէի որդւոյ ելայ արքայի իէլ. թագաւորեաց եզեկիա որդի աքազու արքայի յուդայ: 2 *Որդի քսան և հինգ ամաց էր 'ի թագաւորել իւրում. և քսան և ինն ամ թագաւորեաց յերուսաղէմ. և անուն մօր նորա աբութ՝ դուստր զաքարիայ: 3 *Եւ արար ուղղութիւն առաջի Տն ըստ ամի. զոր արար դաւիթ հայր նորա: 4 *Նա եբարձ զբարձունսն. և խորտակեաց զամ արձանսն. և կոտորեաց զանտառսն. ‖ և զօձն պղնձի. զոր արար մովսէս: զի մինչև ցայն աւուրս զոհէին նմա որդիքն իէլ. և կոչեցին զնա նեէսթան: 5 *'Ի Տէր Ա.Ծ իէլի յուսացաւ. և յետ նր նման նմա ոչ եղև յամ թագաւորս յուդայ. և յեղեալսն յառաջագոյն քան զնա: 6 *Յարեցաւ 'ի Տր. և ոչ մեկնեցաւ 'ի գնացից նորա. և պահեաց զպատուիրանս նորա. զոր պատուիրեաց մովսէս: 7 *Եւ էր Տր ընդ նմա յամի. և զոր ինչ և առնէր՝ խելամուտ լինէր. և նշկահեաց զարքայն ասորեստանի. և ոչ ծառայեաց նմա: 8 *Նա եհար զայլազգիսն մինչև ցգազայ և մինչև ցսահմանս նր՝ յաշտարակէ պահապանացն մինչև ցքաղաքն ամուր: 9 *Եւ եղև յամի չորրորդի եզեկիա արքայի. այն է ամ եօթներորդ ովսեայ՝ որդւոյ ելայ արքայի իէլի. ել սաղմանասար արքայ ասորեստանեայց 'ի սամարիա. և պաշարեաց զնա: 10 *Եւ էառ զնա 'ի կատարել ամաց երից. յամի վեցերորդի եզեկիայ. այն ‖ ամ իններորդ էր ովսեայ արքայի իէլի, առաւ սամարիա: 11 * ‖ Եւ խաղացոյց արքայն ասորեստանեայց զսամարիա յասորեստանեայս. և նստոյց զնս յաղաթ՝ և յաբովր՝ առ գետովն գովզանայ՝ և լեռամբքն մարաց: 12 *Օհ ոչ լուան ձայնի Տն Ա.Ծ իւրեանց. և անցին զուխտիւ նր՝ ըստ ամի զոր պատուիրեաց նոցա մովսէս ծառայ Տն. ոչ լուան, և ոչ արարին: 13 * ‖ Եւ յամի չորեքտասաներորդի արքայի եզեկիայ. ել սենեքերիմ արքայ ասորեստանեայց 'ի վր ամուր ամուր քաղաքացն յուդայ. և էառ զնս: 14 *Եւ առաքեաց եզեկիա արքայ յուդայ հրեշտակս առ արքայ ասորեստանեայց 'ի ղաքիս՝ և ասէ. մեղայ.

[‖ 2. Մնա. 28. 26. և 29.1.]
[‖ Թւոց 21.9.]
[‖ Վեր. 17.6.]
[‖ Տօբ. 1. 2.]
[‖ 2. Մնա. 32.1.]
[Սիր. 48. 20.]
[Եսայ. 36.1.]

ղայ. դարձիր յինէն. և զոր ինչ դիցես 'ի վերայ իմ, բարձից ։ Եւ եդ արքայն ասորեստանեայց 'ի վերայ եզեկիայ արքայի յուդայ երեքհարիւր տաղանդ արծաթոյ՝ և երեսուն տաղանդ ոսկւոյ ։ 15 *Եւ ետ եզեկիա զամ արծաթ գտեալ 'ի տան Տն. և 'ի գանձս տան թագաւորին ։ 16 *'Ի ժամանակի յայնմիկ կոտորեաց եզեկիա զդրունս տաճարին Տն՝ և զսեամսն. զոր պատեաց ոսկւով եզեկիա արքայ յուդայ. և ետ զայն արքայի ասորեստանեայց ։ 17 *Եւ առաքեաց արքայ ասորեստանեայց զթարաթայ՝ և զռաբսարիս՝ և զռափսակ 'ի ղաքիսայ առ արքայ եզեկիայ զօրու ծանու 'ի վերայ երուսաղեմի. և ելին. և եկին յերուսաղէմ. և կացին 'ի վերայ ջրմղին վերնոյ աւազանին. որ է 'ի ճանապարհին ագարակին թափչի ։ 18 *Եւ աղաղակեցին առ եզեկիայ. և եկին առ նոսա. եղիակիմ որդի քեղկեայ հազարապետ. և սոմնաս դպրապետ. և յովաք որդի ասափայ. որ 'ի վն յիշատակաց ։ 19 *Եւ ասէ ցնոսա ռափսակ. ասացէք ցեզեկիայ. այսպէս ասէ արքայ մեծ՝ արքայ ասորեստանեայց. զի՞նչ իցէ յոյսդ՝ յոր դու յուսացեալ իցես ։ 20 *Բայց թէ ասիցես՝ թէ բանք շրթանց՝ և խորհուրդ՝ և զօրութիւն պիտոյ իցէ պատերազմի. և արդ յո՞ յուսացեալ նշկահեցեր զիս ։ 21 *Ահա յուսացեալ իցես 'ի ցուպն եղեգնեայ ջախջախեալ յեգիպտոս. յոր թէ յենուցու այր. մտանիցէ ընդ ձեռս նր. և խոցիցէ զնա. այնպէս փարաւոն արքայ եգիպտացւոց ամ յուսացելոց իւրոց ։ 22 *Եւ զի ասացեր ցիս՝ թէ 'ի Տր Ած յուսացեալ եմք. ո՞չ դա այն է. զորոյ մերժեաց եզեկիա զբարձունս նր. և զսեղանս նր. և ասէ ցյուդայ. և ցերուսաղէմ. առաջի սեղանոյս այսորիկ երկիր պագէք յերուսաղէմ ։ 23 *Եւ արդ աղէ՝ խառնեցարո՛ւք 'ի տէր իմ արքայ ասորեստանեայց. և տաց քեզ երկուս հազարս երիվարաց. եթէ կարասցես տալ դու քեզ հեծեալս 'ի վերայ նց ։ 24 *Եւ զի՞արդ կարիցես զդէմ ունել միոյ ուրուք կուսակալի 'ի ծառայից տեառն իմոյ 'ի յետնոց. զի յուսացեալդ ես յեգիպտոս 'ի կառս և յերիվարս ։ 25 *Իսկ արդ՝ առանց Տն ինչ ելեալ իցեմք 'ի տեղիս յայս ապականել զսա. Տր ասաց ցիս. ե՛լ յերկիրն յայն. և ապականեա զնա ։ 26 *Եւ ասէ եղիակիմ որդի քեղկեայ. և սոմնաս՝ և յովաք ասափայ ցռափսակ. խօսեա՛ց ընդ ծառայս քո ասորերէն. քանզի լսեմք մեք. և մի՛ խօսիր հրէարէն յականջս ժողովրդեանդ. որք կան 'ի պարսպիդ ։ 27 *Եւ ասէ ցնոսա ռափսակ. միթէ առ տէրն քո՝ և առ քեզ առաքեաց զիս տէրն իմ խօսել զբանս զայսոսիկ. ո՞չ ապաքէն առ արս. որք նստին 'ի վերայ պարսպիդ ուտել զաղբ իւրեանց. և ըմպել զմէզ իւրեանց՝ ձեօք հանդերձ ։ 28 *Եւ յարեաւ ռափսակ. և աղաղակեաց մեծաձայն հրէարէն. և խօսեցաւ՝ և ասէ. լուարո՛ւք զպատգամս արքային մեծի. արքային ասորեստանեայց ։ 29 *Այսպէս ասէ արքայ. մի՛ հպարտացուսցէ զձեզ եզեկիա. զի ոչ կարէ ապրեցուցանել զձեզ 'ի ձեռաց իմոց ։ 30 *Եւ մի՛ յուսացուսցէ զձեզ եզեկիա 'ի Տր. և ասասցէ. եթէ փրկելով փրկէ զմեզ Տր. և ոչ մատնեսցի քաղաքդ 'ի ձեռս արքային ասորեստանեայց ։ 31 *Մի՛ լսէք եզեկիայ. զի այսպէս ասէ արքայն ասորեստանեայց. արարէ՛ք ընդ իս օրհնութիւն. և ելէ՛ք առ իս. և կերիցէ այր իւրաքանչիւր զայգի իւր. և զթզենի իւր. և արբցէ ջուր 'ի ջրհորոյ իւրմէ ։ 32 *Մինչև եկից. և առից. և տարայց զձեզ յերկիրն. որ իբրև զերկիրս ձեր է. երկիր ցորենոյ՝ և գինւոյ. այգեաց՝ և հացի՝ երկիր ձիթենեաց. իւղոյ՝ և մեղու. կեցէ՛ք. և ոչ մեռանիցի՛ք. և մի՛ լսէք եզեկիայ. զի խաբէ զձեզ. և ասէ. եթէ Տր փրկեսցէ զմեզ ։ 33 *Միթէ փրկելով փրկեցի՞ն աստուածք ազգացն զիւրաքանչիւր զաշխարհ 'ի ձեռաց արքային ասորեստանեայց ։ 34 *Ո՞ւր է աստուածն եմաթայ. և արփաթայ. և ո՞ւր է աստուածն սփփարուիմայ՝ քաղաքին անայ. և գաւայ. միթէ փրկեցին զսամարիայ 'ի ձեռաց իմոց ։ 35 *Ո՞վ ոք յամ աստուծոց աշխարհաց, որք փրկեցին զաշխարհս իւրեանց 'ի ձեռաց իմոց. զի փրկեսցէ Տր զեէմ 'ի ձեռաց իմոց ։ 36 *Եւ լռեցին. և ո՛չ ետուն պատասխանի. զի պատուէր տուեալ էր արքայի. եթէ մի՛ տայք նմա պատասխանի ։ 37 *Եւ եմուտ եղիակիմ որդի քեղկեայ հազարապետ. և սոմնաս դպրապետ. և յովաք որդի ասափայ. որ 'ի վն յիշատակաց առ եզեկիայ պատառեալ զհանդերձս. և պատմեցին նմա զպատգամս ռափսակայ ։

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ եղև իբրև լուաւ արքայ եզեկիա. պատառեաց զհանդերձս իւր և զգեցաւ քուրձ. և եմուտ 'ի տուն Տն ։ 2 *Եւ առաքեաց զեղիակիմ հա-

հաղարապետ՝ և զոմնս դպրապետ․ և զծերս ՚ի քահանայիցն քրձազգածս առ եսայի մարգարէ որդի ամովսայ: 3 *Եւ ասեն ցնա․ այսպէս ասէ եզեկիա, օր նեղութե, և կշտամբանաց․ և զայրացուցանելոյ օրս այս․ զի հասեալ են մանկունք յերկունս․ և չիք զօրութի ՚ի ծնանելն: 4 *Թերևս լուիցէ Ած քո զպատգամս ռափսակայ․ զոր առաքեաց արքայն ասորեստանեայց տէր իւր՝ նախատել զԱծ կենդանի՝ և հայհոյել բանիւք․ զորս լուաւ Տր Ած քո․ և արասցես աղօթս ՚ի վերայ մնացորդացս՝ որք մնացին: 5 *Եւ եկին ծառայք արքայի եզեկիայ՝ առ եսայիա: 6 *Եւ ասէ ցնս եսայի․ այսպէս ասասջիք տեառն ձերում․ այսպէս ասէ Տր․ մի երկնչիր յերեսաց պատգամացն՝ զորս լուար՝ որովք հայհոյեցին զիս ծառայք արքային ասորեստանեայց: 7 *Ահա ես տամ ՚ի նա այս․ և լուիցէ գոյժ․ և դարձցի յերկիր իւր․ և կործանեցից զնա սրով յերկրի իւրում: 8 *Եւ դարձաւ ռափսակ՝ և եգիտ զարքայն ասորեստանեայց պատերազմել ընդ ղոբնայի․ զի լուաւ թէ չուեաց ՚ի ղաքիսայ: 9 *Եւ լուաւ զթարակայ արքայէ եթեովպացւոց․ ասեն՝ ահա ել պատերազմիլ ընդ քեզ․ և դարձաւ անդրէն՝ և առաքեաց հրեշտակս առ եզեկիա և ասէ: 10 *Այսպէս խօսեսջիր ընդ եզեկիայ արքայի յուդայ․ ասել՝ մի հպարտացուսցէ զքեզ Ած քո․ յոր դու յուսացեալ ես․ ասել՝ եթէ ոչ մատնեսցի եմ՚ ՚ի ձեռս արքային ասորեստանեայց: 11 *Ահա դու քեզէն իսկ լուար զոմ՝ ինչ՝ զոր արարին թագաւորք ասորեստանեայց ընդ ամ աշխարհս նզովել զնս․ և դու փրկեցիս: 12 *Միթէ փրկեցին զնոսա աստուածք ազգաց՝ զորս ապականեցին հարք իմ, զգովզան՝ և զքառան՝ և զռափաթ․ և զորդիսն եդովմայ առ ծովեզերբ: 13 *Ուր է արքայն եմաթայ՝ և արքայն արփաղթայ․ և արքայ քաղաքին սեփարուիմայ՝ անայ․ և աւայ: 14 *Եւ էառ եզեկիա զհրովարտակսն ՚ի ձեռաց հրեշտակացն․ և ընթերցաւ զնոսա․ և ել ՚ի տուն Տն․ և տարածեաց զնս եզեկիա առաջի Տն: 15 *Եւ եկաց յաղօթս եզեկիա առաջի Տն և ասէ․ Տր Ած իղի: որ նստիս ՚ի քերովբէս․ դու ես միայն Ած՝ յամ թագաւորութիս երկրի․ դու արարեր զերկինս և զերկիր: 16 *Խոնարհեցո Տր զունկն քո՝ և լուր․ բաց Տր զաչս քո՝ և տես․ լուր զբանսն սենեքերիմայ՝ զոր առաքեաց նախատել զԱծ կենդանի:

17 *Օի արդարև Տր՝ աւերեցին թագաւորք ասորեստանեայց զազգս և զերկիր նց: 18 *Եւ ետուն զաստուածս նոցա հրոյ․ զի չէին աստուածք, այլ գործք ձեռաց մարդկան․ փայտ՝ և քար․ և կորուսին զնոսա: 19 *Եւ արդ Տր Ած մեր՝ փրկեա զմեզ ՚ի ձեռաց նորա․ և ծանիցեն ամ թագաւորք երկրի, զի դու ես Տր Ած միայն:
20 *Եւ առաքեաց եսայիա որդի ամովսայ առ եզեկիայ՝ և ասէ․ այսպէս ասէ Տր Ած զօրութեց՝ Ած իսրայէլի՝ զոր կացեր յաղօթս առ իս՝ վն սենեքերիմայ արքայի ասորեստանեայց՝ լուայ: 21 *Այս բանն է՝ զոր խօսեցաւ Տր վն նորա․ արհամարհեաց․ անգոսնեաց զքեզ կոյս դուստր սիօնի․ գլուխ շարժեաց ՚ի վր քո դուստր երուսաղէմի: 22 *Զո՞ նախատեցեր․ և հայհոյեցեր․ և յո՞ր վերայ բարձրացուցեր զբարբառ քո՝ նախատել․ և ամբարձեր ՚ի բարձունս զաչս քո ՚ի սուրբն իղի: 23 *Ի ձեռն հրեշտակաց քոց նախատեցեր զՏր՝ և ասացեր․ բազմութբ կառաց իմոց ելի ՚ի բարձրութի լերանց ՚ի կողմն լիբանանու․ և կոտորեցի զմեծութի եղևնափայտից նր․ և զընտիր ընտիր նոճից նորա․ և հասի յեզր ապառուածոյ անտառին կարմեղայ: 24 *Ես պահեցի՝ և արբի զջուրս օտարոտիս․ և աւերեցի թաթիւ ոտին իմոյ զամ գետս սատոկս: 25 *Միթէ չիցէ լուեալ ՚ի հեռաստանէ զայդ՝ զոր արարի յաւուրց յառաջնոց․ ստեղծի զդա՝ և ածի՝ հասուցի․ և եղեն ՚ի հպարտութի գերեվարաց պատերազմողաց քաղաքք ամուրք: 26 *Բնակիչք ՚ի նոսա տկարացան ձեռամբ՝ և զարհուրեցան․ և ամաչեցին՝ և եղեն իբրև զխոտ վայրի՝ և իբրև զդալարի բանջարոյ՝ և զդալարի տանեաց՝ և կոխան առաջի հասելոյն: 27 *Արդ՝ զնստիլ քո՝ և զել և զմուտ քո գիտեմ․ և զսրտմտութի քո: 28 *Ի բարկանալ քում ինձ՝ և խայտալդ քո ել յականջս իմ․ և արկից կարթ ՚ի քիթս քո․ և դանդանաւանդ ՚ի կզակս քո․ և դարձուցից զքեզ ընդ ճանապարհ, ընդ որ եկիր: 29 *Եւ քեզ այս նշանակ լիցի․ կերիցես յայսամ զինքնեկս․ և յամին երկրորդի զինքնեկաց ինքնեկս․ և յամին երրորդի սերմանք՝ և հունձք՝ և տունկք այգեաց․ և կերիջիք զպտուղս նց: 30 *Եւ յաւելցի ապրեալ տանդ յուդայ․ և մնացեալն արմատասցէ ար_ մատս ՚ի խոնարհ․ և պտուղ ՚ի վեր: 31 *Օի յէմէ ելցէ մնացորդ․ և ՚ի սիօնէ լերանէ ապրեալ․ նախանձ Տն զօ_

րու_

*եղ ու եղէկիա

րութեց արասցէ զայս ։ * Վասն այ- 32
նորիկ այսպէս ասէ Տր · արքային ասո-
րեստանեայց մի մտցէ 'ի քաղաքդ յայդ ·
և մի ձգեսցէ զնա նետս · և մի պա-
տեսցէ զդա վահանօք · և մի կուտես-
ցէ զդովաւ հող ։ * Ընդ ճանապարհն 33
ընդ որ եկն՝ ընդ նոյն դարձցի · և 'ի
քաղաքդ յայդ մի մտցէ · ասէ Տր ։
* Եւ վերակացու եղէց քաղաքիդ այդ- 34
միկ փրկել զդա վն իմ, և վն դաւթի
ծառայի իմոյ ։ * Եւ՛ 'ի հասանիլ գի- 35
շերոյն ել հրեշտակ Տն · և եհար 'ի բա-
նակէ ասորեստանեայց հարիւր ութ-
սուն և հինգ հազար · և կանխեցին ը̃
առաւօտն · և ահա ամ մարմինք մե-
ռեալք ։ * Եւ չուեալ գնաց · և դար- 36
ձաւ Սենեքերիմ արքայ ասորեստան-
եայց՝ և բնակեցաւ 'ի Նինուէ ։ * Եւ ե- 37
ղև մինչդեռ երկիր պագանէր 'ի տան
Նեսրաքայ աստուծոյ իւրում · և Ադ-
րամելէք և Սարասար որդիք նր հա-
րին զնա սրով · և ինքեանք զերծան
յերկիրն Արարադայ · և թագաւո-
րեաց Ասորդան որդի նր ընդ նորա ։

Տոբ, 1.21. Մերս. 48. 24. Եսայ. 37. 36. 1. Մակ. 7.41. 2. Մակ. 8.19. Տոբ. 1.24.

## Գլ ։ Ի ։

Յաւուրսն յայնոսիկ հիւանդա- 1
ցաւ եզեկիա 'ի մահ · և եմուտ
առ նա Եսայիա որդի Ամովսայ մարգա-
րէ, և ասէ ցնա · այսպէս ասէ Տր · հրա-
ման տուր վն տան քում · զի մեռանիս
դու · և ոչ ապրեսցիս ։ * Եւ դարձոյց 2
եզեկիա զերեսս իւր յորմն · և եկաց
յաղօթս առ Տր և ասէ ։ * Ո՜վ Տէր՝ 3
յիշեա · որպէս գնացի առաջի քո ճշմար-
տութբ · և կատարեալ սրտիւ · և զբա-
րին առաջի քո արարի · և ելաց եզե-
կիա լալիւն մեծ ։ * Եւ էր Եսայի 'ի 4
սրահին միջնում · և բան Տն եղև առ
նա՝ և ասէ · * Դարձիր անդրէն · և ա- 5
սասցես ցեզեկիա ցառաջնորդ ժողո-
վրդեան իմոյ · այսպէս ասէ Տր Ա.ծ
դաւթի հօր քոյ · լուայ աղօթից քոց ·
և տեսի զարտասուս քո · ահա ես բժշ-
կեցից զքեզ · և յաւուրն երրորդի ել-
ցես 'ի տուն Տն ։ * Եւ յաւելից յաւ- 6
ուրս քո ամս հնգետասան · և 'ի ձեռաց
արքային ասորեստանեայց փրկեցից
զքեզ, և զքաղաքդ զայդ · և վերակա-
ցու եղէց քաղաքիդ այդմիկ վն իմ · և
վն դաւթի ծառայի իմոյ ։ * Եւ ասէ 7
Եսայիա · առցեն պաղատիտս թզոյ · և
առաւ · և դիցես 'ի վր վիրին՝ և ողջաս-
ցի ։ * Եւ ասէ եզեկիա ցեսայիայ · զինչ 8
նշան է եթէ բժշկեսցէ զիս Տր · և ե-
լանիցեմ 'ի տուն Տն յաւուր երրորդի ։
* Եւ ասէ Եսայիա · այս նշան է 'ի Տէ · 9
զի արասցէ Տր զբանն, զոր խօսեցաւ ·

2. Մնաց. 32. 24. Եսայ. 38.1.

զոր էբեր- բերին և եդին 'ի վերայ նր ընդ նորա, ողջացաւ

երթիցէ ստուերն զտասն աստիճանօք ։
10 * Եւ ասէ եզեկիա · դիւրին է ստուե-
րին դառնալ զտասն աստիճանօք · ո՛չ էայն
այդպէս է · այլ դարձցի ստուերն ըզ-
տասն աստիճանօք անդրէն յետս ։
11 * Եւ աղաղակեաց Եսայի մարգարէ
առ Տր · և դարձաւ ստուերն զտասն
քումբք աստիճանօքն անդրէն յետս ·
զտասնեքումբք աստիճանօքն աքա-
12 զու ։ * Ի ժամանակի յայնմիկ առա-
քեաց Մարոդաք Բաղադան որդի
Բաղադանայ արքայ Բաբելոնի հրո-
վարտակս՝ և պատարագս առ եզե-
կիայ · զի լուաւ թէ հիւանդացաւ ե-
13 զեկիա ։ * Եւ ուրախ եղև 'ի նա եզե-
կիա · և եցոյց նց զամ տունս նաքով-
թայ · զարծաթ · և զոսկի · և զխունկս ·
և զիւղս անուշունս · և զտունս անօ-
թոց · և որ ինչ գտանիւր 'ի գանձս նց ·
և ոչ էր տեղի · զոր ոչ եցոյց նոցա եզե-
կիա 'ի տան իւրում · և յամ իշխանու-
14 իւրում ։ * Եւ եմուտ Եսայիա մարգա-
րէ առ արքայ եզեկիայ և ասէ ցնա ·
զինչ խօսեցան արքդ այդոքիկ · և ուս-
տի եկին առ քեզ ։ և ասէ եզեկիա ·
յերկրէ հեռաստանէ եկին առ իս 'ի
15 Բաբելոնէ ։ * Եւ ասէ զինչ տեսին 'ի
տան քում ։ և ասէ եզեկիա · զամ ինչ,
որ 'ի տան իմում էր՝ տեսին · և ոչ ինչ
էր 'ի տան իմում, զոր ոչ ցուցի նոցա ·
16 այլ և ոչ 'ի գանձս իմ ։ * Եւ ասէ Եսայի
17 ցեզեկիայ · լուր զբան Տն ։ * Ահա ա-
ւուրք գան · և առցի ամ որ ինչ 'ի տան
քում է · և զոր ինչ գանձեցին հարքն
քո մինչև ցայսօր · և երթիցէ 'ի Բաբե-
լոն · և մի ինչ մնասցէ · զի բանն է՝ զոր
18 խօսեցաւ Տր ։ * Եւ որդիք քո, որք ե-
լանիցեն 'ի քէն՝ առցին · և եղիցին ներ-
քինիք 'ի տան արքային բաբելացւոց ։
19 * Եւ ասէ եզեկիա ցեսայիայ · բարիէ
բանն Տն · զոր խօսեցաւ ։ և ասէ՝ եղի-
ցի խաղաղութի և ճշմարտութի յա-
20 ւուրս իմ ։ * Եւ մնացորդք բանից ե-
զեկիայ՝ և ամ զօրութի նորա · և որպ
արար զջրաբուղխսն · և զջրմուղս · և
էած ջուր 'ի քաղաքն · ո՛չ ահաւասիկ
գրեալ են 'ի գիրս աւուրց թագաւո-
21 րաց յուդայ ։ * Եւ ննջեաց եզեկիա
ընդ հարս իւր · և թագաւորեաց Մա-
նասէ որդի նորա ընդ նորա ։

Եսայ. 39.1.

## Գլ ։ ԻԱ ։

1 Որդի երկոտասանից ամաց Մանա-
սէ 'ի թագաւորել իւրում ։ և յի-
սուն և հինգ ամ թագաւորեաց յերու-
սաղէմ · և անուն մօր նր Եփսիբայ ։
2 * Եւ արար չար առաջի Տն · ըստ պղ-
ծութեանց ազգացն · զորս եբարձ Տր յե-
րեսաց

2. Մնաց. 33.1. և 4.

րեսաց որդւոցն Իլի ։ *‖ Եւ դարձաւ 3 և շինեաց զբարձունս ․ զորս կործանեաց Եզեկիա հայր նր ․ և կանգնեաց զսեղանն Բահաղու ։ և արար անտառս ․ ոպ արար Աքաաբ արքայ Իլի ։ և երկիր եպագ ամ զօրութե երկնից ․ և ծառայեաց նոցա ։ *Եւ շինեաց սեղան ՚ի 4 տան Տն ․ ոպ ասաց Տր ․ ‖ յԵմ եդից զանուն իմ ։ *Եւ շինեաց սեղան ամ 5 զօրութե երկնից յամ սրահս տանն Տն ։ * Եւ անցոյց զորդիս իւր ընդ 6 հուր ․ և հմայէր ․ և հաւահարց լինէր ․ և արար վհուկս ․ և գէտս ․ և յաճախեաց առնել զչար առաջի Տն առ ՚ի բարկացուցանելոյ զնա ։ *Եւ եդ զ 7 դրօշեալն անտառաց ՚ի տան Տն ․‖ զոր մէ ասաց Տէր ցԴաւիթ և ցՍողոմոն որդի նր ․ թէ ՚ի տանս յայսմիկ և յԵրուսաղէմ ․ զոր ընտրեցի յամ ցեղից Իլի , եդից զանուն իմ յաւիտեան ։

* Եւ ոչ յաւելից շարժել զոտն Իլի 8 յերկրէդ ․ զոր ետու հարց նոցա ։ որք զգուշանայցեն առնել զամ ․ որինչ պատուիրեցի նց ․ ըստ ամ պատուիրանին ․ զոր պատուիրեաց նց ծառայ իմ Մովսէս ։ * Եւ ոչ լուան ։ և մոլորեցոյց 9 զնոսա Մանասէ առնել չար առաջի Տն առաւել քան զազգսն , զորս ապականեաց Տէր յերեսաց որդւոցն Իլի ։ * Եւ խօսեցաւ Տր ՚ի ձեռն ծառայից 10 իւրոց մարգարէից՝ և ասէ ։

*‖ Փոխանակ զի արար Մանասէ արքայ 11 յուդայ զգարշելիսդ զայդոսիկ , զչար՝ առաւել քան զամ ․ զոր արար Ամորհացին առաջի իմ ․ և յանցեաւ և յուդայ կռովք իւրեանց ։ *Վն այնորիկ 12 այսպէս ասէ Տր Ած Իլի ։ ահա ես ածեմ չարիս ՚ի վր Երուսաղէմի ․ և ՚ի վր յուդայ ․ զի ամի որ լսիցէ ․ հնչեսցեն երկոքին ականջք իւր ։ *Եւ ձգեցից 13 ՚ի վր Եմի զչափն Սամարիայ ․ և զկշիռ տանն Աքաաբու ․ և ջնջեցից զԵմ ոպ զշիշ մի ջնջեալ ․ որ կործանեացի ՚ի վր երեսաց իւրոց ։ *Եւ մերժեցից 14 զմնացորդս ժառանգութե իմոյ ․ և մատնեցից զնս ՚ի ձեռս թշնամեաց իւրեանց ․ և եղիցին ՚ի յափշտակութի՝ և յաւար ամ թշնամեաց իւրեանց ․

*Փոխանակ զի արարին չար առաջի 15 իմ ․ և բարկացուցանէին զիս յօրէ յորմէ հանի զնս յեգիպտոսէ մինչև ցայսօր ։ *Նաև զարիւն անպարտ եհեղ 16 Մանասէ բազում յոյժ ․ մինչև ելից զԵմ ՚ի ծայրէ ՚ի ծայր ։ թող զմեղս իւր ․ որովք մեղոյցն զյուդայ առնել չար առաջի Տն ։ *Եւ մնացորդք բանից 17 Մանասէի՝ և ամ ինչ զոր արար ․ և մեղք նորա՝ զորս մեղաւ՝ ոչ ահանիկ

խե

գրեալ են ՚ի գիրս բանից աւուրց Թագաւորացն յուդայ ։ *Եւ ննջեաց 18 Մանասէ ընդ հարս իւր ․ և թաղեցաւ ՚ի պարտիզի տան իւրոյ՝ ՚ի պարտիզին Ոզայ ։ և թագաւորեաց Ամոն որդի նր ընդ նորա ։ * Որդի քսան և երկուց 19 ամաց Ամոն ՚ի թագաւորել իւրում ․ և երկուս ամ թագաւորեաց յԵրուսաղէմ ․ և անուն մօր նորա Մեսողմեթ՝ դուստր Արուսայ յԵտեբաղայ ։ 20 *Եւ արար չար առաջի Տն ․ ոպ արար Մանասէ հայր նորա ։ 21 *Եւ գնաց յամ ճանապարհ՝ յոր գնաց հայր նորա ․ և պաշտեաց զկուռս ․ զորս պաշտեաց հայր նր ․ և երկիր եպագ նց ։ 22 *Եւ եթող զՏր Ած հարց իւրոց ․ և ոչ գնաց ՚ի ճանապարհ Տն ։ 23 *Եւ դաւմարեցան ծառայք Ամոնայ ՚ի վր նորա ․ և սպանին զարքայ ՚ի տան իւրում ։ 24 *Եւ եհար ամ ժողովուրդն զամ դաւամարեալսն ՚ի վր արքային Ամոնայ ․ և թագաւորեցոյց ժողովուրդ երկրին զՅօսիայ որդի նր ընդ նր ։ 25 *Եւ մնացորդք բանից Ամոնայ զոր արար ․ ո՞չ ահանիկ գրեալ են ՚ի գիրս բանից աւուրց Թագաւորացն յուդայ ։ 26 *Եւ ննջեաց Ամոն ընդ հարս իւր ․ և թաղեցին զնա ՚ի գերեզմանի իւրում ՚ի պարտիզին Ոզայ ։ և թագաւորեաց Յօսիա որդի նորա ընդ նորա ։

## ԳԼ․ ԻԲ․

1 Որդի ‖ ամաց ութից Յօսիա ՚ի թագաւորել իւրում ․ և երեսուն և մի ամ թագաւորեաց յԵմ ․ և անուն մօր նորա Յեդիդա ․ դուստր Յեդիդայ ՚ի Բասուրովթայ ։ 2 *Եւ արար ուղղութի առաջի Տն ․ և գնաց յամ ճանապարհս Դաւթի հօր իւրոյ ․ և ոչ խոտորեցաւ յաջ կամ յահեակ ։ 3 *Եւ եղև յամի ութնուտասներորդի Յօսիայ արքայի յուդայ ․ յամսեանն եօթներորդի առաքեաց արքայ զՍափան զորդի Եսեղիայ որդւոյ Մեսողոմայ զդպրապետ տանն ․ և ասէ ։ 4 *Ե՛րթ առ Քեղկեայ քահանայ մեծ ․ զի ձուլեսցեն զարծաթն մտեալ ՚ի տունն Տն ․ զոր ժողովեցին պահապանքն կշռով ՚ի ժողովրդենէն ։ 5 *Եւ տացեն զայն ՚ի ձեռս գործաւորաց գործոյն ցվերակացուս տանն Տն ։ և ետուն ցգործաւորս գործոյն ՚ի տան Տն զօրացուցանել զբեդեկ տանն Տն ։ 6 *Հիւսունս ․ և ցշինողս ․ և ցճարտարս ․ գնել փայտ ․ և քարինս կոփածոյս՝ առ ՚ի կազմելոյ զբեդեկ տանն Տն ։ 7 *Բայց ո՛չ առնէին համար արծաթոյն տուելոյ նց ․ 8 քանզի յաւատ գործէին ։ *Եւ ասէ

քեղկեա քահանայ մեծ ցսափան դպրապետ ։ մատեան օրինաց գտի 'ի տան Տն՟ ։ և ետ քեղկեա ցսափան. և ընթերցաւ զայն ։ 9 * Եւ՛ տարաւ առ արքայ զպատգամն ։ և ասէ. ձուլեցին ծառայք քո զարծաթն գտեալ 'ի տան Տն՟. և ետուն զայն 'ի ձեռս գործաւորացն գործոյն՝ վերակացուաց 'ի տան Տն՟ ։ 10 * Եւ խօսեցաւ սափան դպրապետ ընդ արքայի՝ և ասէ. մատեան մի ետ ցիս քեղկեա քահանայ ։ և ընթերցաւ զայն սափան առաջի արքայի ։ 11 * Եւ եղև իբրև լուաւ արքայ զբանս մատենի օրինացն. պատառեաց զհանդերձս իւր ։ 12 * Եւ՛ պատուէր ետ արքայ քեղկեայ քահանայի. և աքիկամայ որդւոյ սափանայ. և աքոբորայ որդւոյ միքէի. և սափանայ դպրապետի. և յասայեայ ծառայի արքայի՝ և ասէ ։ 13 * Երթա՛յք խնդրեցէք 'ի Տէ վն՟ իմ և վն՟ ամ՟ ժողովրդեանդ՝ և վասն ամ՟ յուդայ. և վն՟ բանից մատենիդ գտելոյ այդորիկ ։ զի մեծ բարկութի Տն՟ բորբոքեալ է 'ի մեզ. փոխանակ զի ոչ լուան հարք մեր բանից մատենիդ այդորիկ առնել ըստ ամ՟ գրելոյդ զմէնջ ։ 14 * Եւ՛ գնաց քեղկեա քահանայ. և աքիկամ. և աքոբովր. և սափան. և յասայեա. առ ողդա մարգարէ կին սեղովմայ որդւոյ թեկուայ. որդւոյ արասայ պատմուճանկի ։ և նա բնակէր յեէմ՟ 'ի մասենայ ։ և խօսեցան ը՟ նմա ։ 15 * Եւ՛ ասէ ցնս՟. այսպէս ասէ Տր՟ Ած՟ իէլի. ասացէք ցայրն. որ առաքեաց զձեզ առ իս ։ 16 * Այսպէս ասէ Տր՟. ահա ածեմ չարիս 'ի վերայ տեղւոյդ այդորիկ. և 'ի վն՟ բնակչաց դորա. ըստ ամ՟ բանից մատենին. զոր ընթերցաւ արքայ յուդայ ։ 17 * Փոխանակ զի թողին զիս. և արկանէին խունկս աստուծոց օտարաց. զի բարկացուսցեն զիս գործովք ձեռաց իւրեանց. և բորբոքեսցի սրտմտութի իմ 'ի տեղւոջդ յայդմիկ. և մի՛ շիջցի ։ 18 * Եւ՛ ցարքայ յուդայ՝ որ առաքեաց զձեզ խնդրել զՏր՟. զայս ասասջիք. այսպէս ասէ Տր՟ Ած՟ իէլի ։ բանքն՝ զոր լուար. այսոքիկ են ։ 19 * Փոխանակ զի կակղացաւ սիրտ քո. և պատկառեցար յերեսաց Տն՟. իբրև լուար զինչ խօսեցաւ 'ի վն՟ տեղւոյդ այդորիկ. և 'ի վն՟ բնակչաց դորա՛ լինել յապականութի և յանէծս. և պատառեցեր զհանդերձս քո. և լացեր առաջի իմ. և ես լուայ՝ ասէ Տր՟ ։ 20 * Վն՟ այդորիկ ես յաւելում զքեզ առ հարս քո. և ժողովեսցիս 'ի տեղւոջ քում յեէմ՟. և ոչ տեսցեն աչք քո զամ՟ չարիսն. զորս ես ածից 'ի վերայ տեղւոյդ այդորիկ ։

(Margin: հատուցեցին)

## Գլ. ԻԳ.

1 Եւ՛ դարձուցին արքայի զպատգամն. զոր յղեաց արքայ ։ ‖ Եւ ժողովեաց առ ինքն զամ՟ ծերս յուդայ՝ և եէմի ։ 2 * Եւ՛ ել արքայ 'ի տուն Տն՟. և ամ՟ այր յուդայ՝ և ամ՟ բնակիչք եէմի ընդ նմա. և քահանայք՝ և մարգարէք՝ և ամ՟ ժողովուրդն ընդ նմա 'ի փոքուէ մինչև ցմեծ. և ընթերցաւ յականջս նոցա զամ՟ բանս մատենի ուխտին գտելոյ 'ի տան Տն՟ ։ 3 * Եւ՛ եկաց արքայ 'ի վն՟ սեանն. և ուխտեաց ուխտ առաջի Տն՟ երթալոյ զհետ Տն՟ և պահելոյ զպատուիրանս նորա, և զվկայութիս նր՟ և զիրաւունս նր՟ յամ՟ սրտէ՝ և յամ՟ անձնէ. կանգնել զբանս ուխտին գրելոյ 'ի մատենի յայնմիկ. և եկաց ամ՟ ժողովուրդն յուխտի ։ 4 * Եւ՛ պատուէր ետ արքայ քեղկեայ քահանայի մեծի. և քահանայիցն երկրորդաց. և պահապանաց կշռոցն՝ ‖ հանել 'ի տաճարէն Տն՟ զամ՟ անօթ գործեալ բահաղու. և անտառաց. և զօրութեց երկնից. և այրեաց զնս՟ արտաքոյ եէմի. 'ի սադեմօթ կեդրոնի. և եարկ զմոխիր նց՟ 'ի բեթէլ ։ 5 * Եւ՛ այրեաց զքոմմարիմն. զոր տուեալ էր արքայիցն յուդայ՝ և արկանէին խունկս 'ի բարձունս. և յամ՟ քաղաքս յուդայ՝ և շուրջ զեէմաւ. և զխնկարկուսն արեգական՝ և լուսնին՝ և աստեղաց՝ և ամ՟ զօրուէ երկնից ։ 6 * Եւ՛ եհան զանտառն 'ի տանէ Տն՟ արտաքոյ եէմի 'ի հեղեղատն կեդրոնի. և այրեաց զայն 'ի հեղեղատին կեդրոնի. և մանրեաց իբրև զփոշի. և ցանեաց զմոխիրն նր՟ 'ի գերեզմանս որդւոց ժողովրդեանն ։ 7 * Եւ՛ քակեաց զտունն կադէսիմացն. որ 'ի տան Տն՟. յորում կանայքն անկանէին զպատմուճանս անտառացն ։ 8 * Եւ՛ եհան զամ՟ քուրմսն 'ի քաղաքէն յուդայ. և պղծեաց զբարձունսն. յոր արկանէին խունկս քուրմքն 'ի գաբաայ մինչև ցբերսաբէէ. և քակեաց զտունն դրանցն. որ առ դրանդւոջ դրանն յեսուայ իշխանի դրանն 'ի ձախմէ առ դրան քաղաքին ։ 9 * Բայց ոչ ելանէին քուրմք բարձանց 'ի սեղան Տն՟. որ յեէմ, եթէ ոչ ուտէին բաղարջ 'ի մէջ եղբարց իւրց՟ ։ 10 * ‖ Եւ՛ պղծեաց զթոփոթ. որ 'ի ձոր որդւոցն ենոմայ առ 'ի չածելոյ առն զուստր իւր կամ զդուստր զբոցով մեղքոմայ ։ 11 * Եւ՛ այրեցին զձին. զորս ետ արքայն յուդայ արեգական 'ի մուտս տանն Տն՟ 'ի գանձանակին նաթանայ ներքինւոյ արքայի. որ 'ի փարուրիմ. և զկառսն արե

գա_

(Margin: ‖2. Մն. 34. 28. — ‖Երեմ. 49. 3. — դրանդւոջ — ‖Ղեւ. 18. 21.)

գական այրեաց հրով։ * Եւ զսեղանս 12
որ 'ի վերայ տանեաց վերնատանն. զոր
արարին թագաւորք յուդայ. և զսե_
ղանս՝ զորս արար մանասէ յերկուս
սրահս տանն Տն։ և քակեաց զայն ան
քայ. և կործանեաց անտի. և ընկեց
զհող նց 'ի հեղեղատն կեդրոնի։ * Նա 13
և զտունն. որ 'ի դիմաց եմի ընդ աջ
‖Գ.Թագ. 11.7. մէ լերինն մոսաթայ. ‖ զոր շինեաց սա
ղոմոն արքայ իղի աստարտայ գարշել
ւոյ սիդոնացւոյ. և քամովսայ զազրո
ւոյ մովաբայ. և մեղքոմայ գարշել
ւոյ որդւոցն ամմոնայ՝ պղծեաց ար_
քայ։ * Եւ խորտակեաց զարձանսն. 14
և կոտորեաց զանտառսն. և ելից զտե
‖Գ.Թագ. 13.32. ղիս նոցա ոսկերօք մարդկան։ * ‖ Եւ 15
զսեղանն որ 'ի բեթէլ զբարձր. զոր
արար յերոբովամ որդի նաբատայ. որ
մեղոյց զիէլ. և զայն ևս սեղան զբարձր
կործանեաց. և խորտակեաց զքարինս
նորա. և մանրեաց 'ի փոշի. և այրեաց
զանտառն։ * Եւ հայեցաւ յովսիա. և 16
ետես զգերեզմանս՝ որք 'ի քաղաքին.
և առաքեաց, և էառ զոսկերսն 'ի գե
րեզմանացն՝ և այրեաց 'ի վր սեղա_
նոյն. և պղծեաց զնա ըստ բանին Տն.
զոր խօսեցաւ այրն Այ. մինչ կայր յե_
րոբովամ 'ի տօնին 'ի վր սեղանոյն։ և
դարձոյց զաչս իւր 'ի գերեզման առնն
Այ. որ խօսեցաւ զբանս զայսոսիկ։
‖Գ.Թագ. 13.2. * ‖ Եւ ասէ՝ զի՞նչ է կոթողն այն՝ զոր 17
ես տեսանեմ։ և ասեն ցնա արքքաղա
քին. այրն Այ է՝ որ եկն 'ի յուդայէ.
և բարբառեցաւ զբանս զայսոսիկ 'ի
վր սեղանոյն բեթելայ։ * Եւ ասէ. 18
թո՛յլ տուք զայն. մի՛ ոք շարժեսցէ զոս
կերս նր։ և դտան ոսկերք նր ընդ ոս_
կերս մարգարէին եկելոյ 'ի սամարիայ։
* Նա և զամ տունս բարձանց. զորս 19
'ի քաղաքս սամարիայ արարին թա_
գաւորք իէլի առ 'ի բարկացուցանելոյ
արքայ զՏր, մերժեաց յովսիա արքայ իէլի. և
յուդայ արար ըստ ամ գործոցն. զոր արար 'ի
բեթէլ։ * Եւ ձենձերեաց զամենայն 20
քուրմս բարձանցն. որք էին անդ 'ի վր
սեղանոյն։ և այրեաց զոսկերս մարդ_
կան 'ի վր նց. և դարձաւ յեմ։ * Եւ 21
պատուէր ետ արքայ ամ ժողովրդ_
‖Բ.Մն. 35.1. եանն՝ և ասէ. ‖ Արարէք զատիկ Տն Այ
մերում. որպէս և գրեալ է 'ի մատենի ուխ
տիս այսորիկ։ * Զի ոչ եղև զատիկն 22
այն յաւուրց դատաւորացն. որք դա_
տէին զիէլ և յաւուրս թագաւորացն
իէլի. և թագաւորացն յուդայ։ * Այլ 23
զի յութուտասներորդի ամի արքայի
յովսիայ եղև զատիկն այն Տն յեմ։
* Եւ զվհուկս՝ և զգէտս՝ և զթերա_ 24
փիմս՝ և զկուռսն՝ և զամ գարշելիսն

խե 2

եղեալ 'ի յուդայ. և յեմ, եբարձ յո_
սիա. զի հաստատեսցէ զբանս օրի_
նացն գրելոց 'ի մատենին. զոր եգիտ
25 քեղկեաքահանայ 'ի տան Տն։ * Նման
նմա ոչ եղև յառաջ քան զնա թագաւ
որ. որ դարձաւ առ Տր յամ սրտէ իւր
մէ. և յամ անձնէ իւրմէ. և յամ զօրու
թէ իւրմէ. ըստ ամ օրինացն մովսէսի։
26 և յետ նր ոչ եկաց նման նմա։ * Սա_
կայն ոչ դարձաւ Տր 'ի սրտմտութենէ
բարկութե իւրոյ մեծէ. զոր սրտմտե
ցաւ բարկութբ իւրով 'ի վր յուդայ
վս զայրացութեցն. որովք զայրացոյց
27 զնա մանասէ։ * ‖ Եւ ասէ Տր. նաև ‖[illegible]
զյուդայ մերժեցից յերեսաց իմոց՝ որպ 24.2.
մերժեցի զիէլ։ և մերժեցից զքաղաքդ
զայդ. զոր ընտրեցի զեմ. և զտունդ
զորմէ ասացի թէ դիցի անուն իմ անդ։
28 * Եւ մնացորդք բանիցն յովսիայ՝ և ամ
ինչ զոր արար. ոչ ահաւասիկ գրեալ են
'ի գիրս բանից աւուրց թագաւորացն
29 յուդայ։ * ‖ Յաւուրս յայնոսիկ ել ‖Բ.Մն.
փարաւոն նեքաւով արքայ եգիպտա_ 35.20.
ցւոց 'ի վր արքային ասորեստանեայց
առ եփրատ գետով. և գնաց յովսիա
արքայ ընդ առաջ նորա. և սպան զնա
'ի մակեդով 'ի տեսանելն նորա զնա։
30 * Եւ բարձին զնա ծառայքն նր 'ի մա
կեդովայ. և բերին զնա յեմ. և թաղե
ցին զնա 'ի գերեզմանի իւրում։ ‖ և ‖Բ.Մն.
էառ ժողովուրդ երկրին զյովաքազ 36.1.
որդի յովսեայ. և օծին զնա և թագաւո
րեցուցին զնա փոխանակ հօր իւրոյ։
31 * Որդի քսանևերից ամաց էր յովա_
քազ 'ի թագաւորել իւրում. և երիս
ամիս թագաւորեաց յեմ։ և անուն
մօր նր ամիտալ. դուստր երեմիայի 'ի
32 զուբնայ։ * Եւ արար չար առաջի Տն
33 ըստ ամի. զոր արարին հարք նր։ * Եւ
փոխեաց զնա փարաւոն նեքաւով 'ի
դեբլաթայ յերկրին եմաթայ. չթա_
գաւորել նմա յեմ. և էարկ հարկ
երկրին հարիւր տաղանդ արծաթոյ
34 և տասն տաղանդ ոսկւոյ։ * Եւ թա
գաւորեցոյց փարաւոն նեքաւով 'ի վր
նր զեղիակիմ որդի յովսիայ արքայի
յուդայ փոխանակ յովսիայ հօր իւրոյ։
և փոխեաց զանուն նր յովակիմ. և
զյովաքազ էառ՝ և տարաւ յեգիպ_
35 տոս. և մեռաւ անդ։ * Եւ զարծաթն
և զոսկին ետ յովակիմ փարաւոնի։
սակայն հնգով գրեցին զերկիրն տալ
զարծաթն բանիւ փարաւոնի. այր ըստ
սակի իւրումեառն զարծաթն և զոս
կի հանդերձ ժողովրդեամբ երկրին
36 տալ փարաւոնի նեքաւովայ։ * Որդի
քսանևհինգ ամաց էր յովակիմ 'ի թա
գաւորել իւրում. և մետասան ամ թա

Yy 2 գաւ_

դաւորեաց յԵ՜մ. և անուն մօր նորա եղդափ. դուստր յեդդելայ յոմմայ: 37 * Եւ արար չար առաջի Տն ըստ ամի. զոր արարին հարք նորա:

## ԳԼ: ԻԴ.

1 Յաւուրս նր ել նաբուգոդոնոսոր արքայ բաբելոնի. և եղև նր ծառայ յովակիմ ամս երիս. և դարձաւ ապստամբեաց 'ի նմանէ: 2 * Եւ առաքեաց Տր նմա զմեկնակաղէնսն քաղդեացւոց. և զմեկնակաղէնսն ասորւոց. և զմեկնակաղէնսն մովաբայ. և զմեկնակաղէնսն որդւոց ամոնայ. և առաքեաց զնս յերկիրն հրէաստանի. սատակել զնս ‖ ըստ բանին Տն. զոր խօսեցաւ 'ի ձեռն ծառայից իւրոց մարգարէից: 3 * Բայց բարկութի Տն էր 'ի վր յուդայ մերժել զնա յերեսաց իւրոց՝ վս մեղաց մանասէի ըստ ամի զոր արար: 4 * Եւ վս անպարտ արեանցն. զոր եհեղ. և ելից զԵ՜մ անպարտ արեամբ. և ոչ կամեցաւ Տր ցածնուլ: 5 * Եւ մնացորդք բանից յովակիմայ՝ և ամ ինչ զոր արար. ոչ ահաւանիկ գրեալ են 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ. և ննջեաց յովակիմ ընդ հարս իւր: 6 * Եւ թագաւորեաց յովակիմ որդի նր ընդ նր: 7 * Եւ ոչ ևս յաւել արքայն եգիպտացւոց ելանել յերկրէն իւրմէ: քանզի էառ արքայն բաբելոնի 'ի հեղեղատէն եգիպտացւոց մինչև ցգետն եփրատ. զամ ինչ, որ էր արքային եգիպտացւոց: 8 * Որդի ամաց ութուտասնից էր յովակիմ 'ի թագաւորել իւրում. և երիս ամիս թագաւորեաց յԵ՜մ. և անուն մօր նր անեսթայ. դուստր եղամաթայ յԵ՜մէ: 9 * Եւ արար չար առաջի Տն. ըստ ամի զոր արար հայր նր: 10 * ‖ Ի ժամանակին յայնմիկ ել նաբուգոդոնոսոր արքայ բաբելոնի յԵ՜մ. և եկն քաղաքն 'ի պաշարումն: 11 * Եւ եմուտ արքայն բաբելացւոց 'ի քաղաքն. և ծառայք նր պաշարեալ պահէին զնա: 12 * Եւ ել յովակիմ արքայ յուդայ առ արքայն բաբելացւոց. ինքն՝ և ծառայք իւր՝ և մայր իւր՝ և իշխանք իւր՝ և ներքինիք իւր. և էառ զնս արքայն բաբելացւոց. յամի ութերորդի թագաւորութե իւրոյ: 13 * Եւ եհան զամ գանձս տանն Տն. և զգանձս տանն թագաւորին: և կոտորեաց զամ անօթս ոսկեղէնս. զոր արար սողոմոն արքայ իղի 'ի տաճարին Տն. ըստ բանին Տն: 14 * Եւ խաղացոյց զամ զԵ՜մ. և զամ իշխանս. և զամ զօրաւորս զօրութե 'ի գերութե տասն հազար գերեաց: և զամ զհիւսունս և զդարհիճս: և ոչոք մնաց՝ բաց յաղքատաց երկրին: 15 * ‖ Եւ խաղացոյց զյովակիմ 'ի բաբելոն. և զմայր թագաւորին. և զկանայս նորա՝ և զներքինիսն նր. և զզօրաւորս երկրին վարեաց 'ի գերութե յԵրուսաղեմէ 'ի բաբելոն: 16 * Եւ զամ արս զօրութե. արս եօթն հազար: և զհիւսունսն՝ և զդարհիճս. հազար այր: ամենեքին զօրաւորք՝ պատերազմօղք: և վարեաց զնս արքայն բաբելացւոց 'ի գերութե 'ի բաբելոն: 17 * ‖ Եւ թագաւորեցոյց արքայն բաբելացւոց զմեթթանիայ որդի նր ընդ նր. 18 և եդ նմա անուն սեդեկիա: * Որդի քսան և մի ամաց էր սեդեկիա 'ի թագաւորել իւրում. և մետասան ամ թագաւորեաց յԵ՜մ. և անուն մօր նր ամատել դուստր երեմիայ 'ի ղոբնայ: 19 * Եւ արար չար առաջի Տն. զոր արար յովակիմ: 20 * Զի սրտմտութի Տն էր 'ի վերայ Ե՜մի և յուդայ. մինչև ընկէց զնս յերեսաց իւրոց: և նշկահեաց սեդեկիա զարքայն բաբելացւոց:

## ԳԼ: ԻԵ.

1 Եւ ‖ եղև յամի իններորդի թագաւորութե նր. յամսեանն տասներորդի. որ օր տասն էր ամսոյն. եկն նաբուգոդոնոսոր արքայ բաբելոնի. և ամ զօրք իւր 'ի վր Ե՜մի. և բանակեցաւ զնովաւ. և շինեաց շուրջ զնովաւ պարիսպ: 2 * Եւ պաշարեցաւ քաղաքն մինչև ցամն մետասաներորդ սեդեկիայ արքայի: 3 * Եւ ցամիսն իններորդ. սաստկացաւ սով 'ի քաղաքին. և ոչ գոյր հաց ժողովրդեան երկրին: 4 * Եւ խրամատեցաւ քաղաքն. և ամ արք պատերազմի ելին արտաքս 'ի գիշերի ընդ ճանապարհ դրանն. ընդ մէջ պարսպացն. որ է առ պարտիզաւն արքունի. և քաղդեացիքն պատեալ էին շուրջ զքաղաքաւն: և գնաց ընդ ճանապարհն արաբիայ: 5 * Եւ պնդեցաւ զօրն քաղդեացւոց զհետ թագաւորին. և հասին նմա յարաբօթ երիքովայ: և ամ զօրք նորա ցրուեցան 'ի նմանէ: 6 * Եւ կալան զթագաւորն. և ածին առ արքայն բաբելոնի 'ի դեբղաթայ: և խօսեցաւ ընդ նմա դատաստանօք: 7 * Եւ զորդիսն սեդեկիայ սպան առաջի նր. և զաչսն սեդեկիայ կուրացոյց. և կապեաց զնա կապանօք. և տարաւ 'ի բաբելոն: 8 * Եւ յամսեանն հինգերորդի. որ օր եօթն էր ամսոյն. այն ամ իննուտասն էր նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց: եկն նաբուզարդան դահճապետ յանդիմանակաց արքային բաբելացւոց յԵ՜մ: 9 * ‖ Եւ այրեաց զտունն Տն. և

Վեր. 23. 27. — Դանի. 1. 1. — Երեմ. 52. 1. — 73. 7.

և զտուն թագաւորին ։ և զամ̃ տունս
երէմի այրեաց հրով ։ *Եւ զպարիսպն 10
երէմի շուրջանակի քակեցին ամ̃ զօրքն
քաղդէացւոց ․ որք ընդ դահճապե_
տին ։ *Եւ զաւելորդս ժողովրդեանն․ 11
և զմնացեալս քաղաքին․ և զանկեալս
յարքայն բաբիլոնի ։ և զայլս խու_
ժան ժողովրդեանն խաղացոյց նաբու
զարդան դահճապետ ։ *Եւ յաղքա_ 12
տաց երկրին եթող դահճապետն այ
գեգործս և արդիւնարարս ։ *Եւ 13
զսիւնսն պղնձի զերկուսին․ որ 'ի տան
Տ̃ն․ և զմեքենովթսն պղնձի․ և զծովն
պղնձի․ որ 'ի տանն Տ̃ն․ խորտակեցին
քաղդէացիքն․ և բարձին զպղինձս նց
'ի բաբիլոն ։ *Եւ զսանսն․ և զկաթ_ 14
սայսն․ և զտաշտսն․ և զտուփսն․ և զամ̃
անօթս պղնձիս որովք պաշտէին՝ առին ։
*Եւ զբուրվառսն ․ և զափսեայսն 15
զարծաթիս․ և զոսկիս․ էառ դահճա
պետն ։ *Եւ զսիւնսն զերկուսին ․ և 16
զծովն մի․ և զմեքենովթսն․ զոր արար
սաղոմոն 'ի տան Տ̃ն․ և ոչ գոյր կշիռ
պղնձոյն ամ̃ անօթոցն ։ *Յութու_ 17
տասն կանգնոյ բարձրութի միոյ սեանն․
և քովթար պղնձի 'ի վ̃ր նր․ և բարձրու
թի միոյ քովթարայ՝ յերից կանգնոց ։
և սաբակ․ և նռնաձևք 'ի վերայ քօթա
րայն շուրջանակի ամ̃ պղնձի ։ ըս̃ նմին
օրինակի և երկրորդի սեանն 'ի վ̃ր սա
բակին ։ *Եւ էառ դահճապետն զս 18
սարայի քահանայն զառաջին․ և զսո_
փոնիայ զերկրորդ քահանայն․ և զե_
րիս պահապանսն կշռոյն ։ *Եւ 'ի քա_ 19
ղաքէ առաւ էառ ներքինի մի․ որ էր
ոստիկան արանց պատերազմողաց․ և
հինգ այր յանդիմանակացաց արքայի
գտեալս 'ի քաղաքին ․ և զդպրապետն
իշխանի զօրուն զկարգիչ ժողովրդեան
երկրին․ և եօթն այր 'ի ժողովրդենէ
երկրին․ և զգտեալս 'ի քաղաքին ։ *Եւ 20
էառ զնոսա նաբուզարդան դահճա_
պետ․ և տարաւ զնս առ արքայն բա_
բիլոնի 'ի դեբղաթայ ։ *Եւ եհար 21
զնս արքայն բաբիլոնի․ և սպան զնս 'ի
դեբղաթայ յերկրին եմաթայ․ և գնե

Երեմ. 27.19. — Յթագ. 7.15. — 2.Մնաց. 3.15. — Երեմ. 52. 21.

22 րեցաւ յուդա յերկրէ իւրմէ ։ *Եւ
զժողովուրդն․ որ մնաց 'ի յուդայէ ,
եթող նաբուգոդոնոսոր արքայ բաբի
լոնի․ և կացոյց 'ի վ̃ր նոցա զգոդողիայ
որդի աքիկամայ որդւոյ սափանայ ։
23 *Եւ լուան ամ̃ իշխանք զօրու նորա՝
և արք նց՝ եթէ կացոյց 'ի վ̃ր արքայն
բաբիլացւոց զգոդողիայ ․ եկին առ
գոդողիայ 'ի մասեփայ․ իսմայէլ որդի
նաթանիայ ․ և յունան որդի կարեէ․
և սարախայ որդի թանայի մայտոփա
տացի․ և յեզոնիա որդի մաքաթայ․
24 ինքեանք, և արք իւրեանց ։ *Եւ երդուա
ան գոդողիայ՝ ինքեանք, և արք իւր_
եանց ։ և ասէ ցնս ․ մի երկնչիք յաս_
պատակէ քաղդէացւոցն․ նստարուք
յերկրիս․ և ծառայեցէք արքային բա
25 բիլոնի․ և բարի եղիցի ձեզ ։ *Եւ եղև
յամսեանն եօթներորդի ․ եկն իսմայ
էլ որդի նաթանիայ որդւոյ եղիսա_
մայ 'ի զաւակէ թագաւորաց․ և տասն
այր ընդ նմա ․ և հարին զգոդողիայ ,
և մեռաւ ․ և զհրէայսն՝ և զքաղդէա
ցիսն ․ որք էին ընդ նմա 'ի մասեփայ ։
26 *Եւ յարեաւ ամ̃ ժողովուրդն 'ի փո
քուէ մինչև ցմեծ ․ և իշխանք զօրուն՝
մտին յեգիպտոս ․ զի երկեան յերե_
27 սաց քաղդէացւոցն ։ *Եւ եղև յերես_
ներորդի և յեօթներորդի ամի գերու
թեն յովակիմայ արքայի յուդայ․ յամ
սեանն երկոտասաներորդի․ և 'ի քսան
և եօթն ամսոյն․ բարձրացոյց եվիլմա_
րովդաք արքայ բաբիլոնի յամի թա_
գաւորութե իւրոյ զգլուխ յովակի_
մայ արքայի յուդայ․ և եհան զնա 'ի
28 տանէ բանտի իւրոյ ։ *Եւ խօսեցաւ
ընդ նմա քաղցրութ̃բ ․ և եարկ զա_
թոռ նորա 'ի վերոյ քան զաթոռ թա
29 գաւորացն ․ որք 'ի բաբիլոնի ։ *Եւ
փոխեաց զհանդերձս բանտի նորա ․
և ուտէր հաց հանապազ առաջի նր
զամենայն աւուրս կենաց իւրոց ։
30 *Եւ ռոճիկ նորա ռոճիկ հանապա_
զորդ տուաւ նմա 'ի տանէ թագաւո_
րին համարով՝ օրըստօրէ զամ̃ աւուրս
կենաց իւրոց ։

Երեմ. 40. 5. և 9.



Ադամ. Սէթ. Ենոս. Ենոք. Նոյ։



Մովսէս. Սամուէլ. Դաւիթ. Նաթան։

# ԳԻՐՔ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ՄՆԱՑՈՐ
## ԴԱՑ. ՈՐ Է ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑԻՈՑՆ. ԴԻԲՐԷ ՀԱՅԱՄԻՄ.

### Գլուխ Առաջներորդ ։

Ծննդ. 2.7. և 4. 24. և 5. 6. 9.



ԴԱՄ. ‖ ՍԷԹ. ԵՆՈՎՍ։ 1
*Կայնան. Մաղաղէէլ. Յարեդ։ 2
*Ենովք. Մաթուսաղայ. Ղամէք. Նոյ։ 3
*Որդիք Նոյի. Սեմ. Քամ. Յաբեթ։ 4
*‖ Որդիք Յաբեթի. Գամեր. Մագոգ. Մադայի. Յովիդան. Եղիսան. Թոբէլ. Մոսոք. և Թիրաս։ 5 (Ծննդ. 10.2.)
*Եւ որդիք Գամերայ Ասքանէզ. և Հռիփաթ. և Թորգոմա։ 6
*Եւ որդիք Յովիդանայ. Եղիսայ. և Թարսիս. Կիտացիք՝ և Հռոդացիք։ 7
*Եւ որդիք Քամայ. Քուշ. և Մեստրեմ. Փութ. և Քանաան։ 8
*Եւ որդիք Քուշայ. Սաբա. և Եւիղա. և Սաբաթա. և Հռեգմա. և Սեբեթաքա։ և որդիք Հռեգմայ. Սաբա. և Դեդան։ 9 (Ծննդ. 10.8.)
10 *‖ Եւ Քուշ ծնաւ զՆեբրովթ. սա սկսաւ լինել հսկայ որսորդ ՚ի վերայ երկրի։ (զՆեբրովթ)
11 *Եւ Մեստրեմ ծնաւ զԼուդիիմացիս. և զԱնամիմացիս. և զԼաբիմացիս. և զՆեփթաղիմացիս
12 *Եւ զՊատրոսոնիմացիս. և զՔասղոնիմացիս. ուստի ելին անտի Փղշտացիք. և զԿափթորիմացիս։
13 *Եւ Քանաան ծնաւ զՍիդոն զանդրանիկ իւր. և զՔետացին։
14 *Եւ զՅեբուսացին. և զԱմորհացին. և զԳերգեսացին։
15 *Եւ զԽեւացին. և զԱրուկեցին. և
16 զԱսենացին։ *Եւ զԱրադացին. և զՍամարացին. և զԱմաթացին։
17 *‖ Որդիք Սեմայ. Եղամ. և Ասուր. և Արփաքսադ՝ և Ղուդ. և Արամ. (և որդիք Արամայ) Հուս. և Եմուղ. և Գաթեր. և Մոսոք։ (Ծննդ. 10. 22. և 11.10)
18 *Եւ Արփաքսադ ծնաւ

(զԿայն-

(զկայինամ. և կայինամ ծնաւ) զսա_
ղայ. և սաղա ծնաւ զեբեր: *Եւ Ե_ 19 [Ծննդ. 11. 15.]
բերայ ծնան երկու որդիք. անուն մի_
ումն փաղեկ. զի յաւուրս նորա բաժ_
անեցաւ երկիր. և անուն եղբօր նր
յեկտան: *Եւ յեկտան ծնաւ զէղ_ 20
մովդադ. և զսաղափ. և զարամօթ:
*Եւ զկեդրուրան. և զեզել. և զդեկ 21
ղան. և զիրահ: *Եւ զկամաան. և 22
զաբիմեել. և զսաբա: *Եւ զուփիր. 23
և զեւի. և զօրամ. ամենեքեան սոքա
որդիք յեկտանայ: *Որդիք սեմայ. 24
յեղամ. և ասուր. և արփաքսադ. և
սաղա: *Եբեր. փաղեկ. ռագաւ: 25
*Սերուգ. նաքոր. թարայ: 26 [Ծննդ. 11.26.]
*Աբրամ. նա ինքն է աբրահամ: 27
*Եւ որդիք աբրահամու. իսահակ. և 28 [Ծննդ. 16.11.]
իսմայէլ, *Սոքեն ծնունդք իսմայէլի. 29
նաբէովթ. և կեդար. և նաբդեէլ. [Ծննդ. 25. 13.]
մաբսան: *Մասմա. և իդումա. մասսէ. 30
քոդադ. թեմամն: *Իտուր. նափես. 31
և կեդմա. սոքա են որդիք իսմայէլի:
*Եւ որդիք քետուրայ հարճին աբ_ 32 [Ծննդ. 25.2.]
րահամու. և ծնաւ նմա զեմրան. և
զյեկսան. և զմադան. և զմադիան.
և զյեսբոկ. և զսովէ: և որդիք յեկ_
սանայ. սաբա. և դեդան: և որդիք
դեդանայ. (ռագուէլ. և նաբդեէլ.)
և ասուրիմ. և ղատուսիիմ. և
ղովմին: *Եւ որդիք մադիանայ. 33 [Ծննդ. 25.4.]
գեփար. և ոփեր. և ենոք. և աբիդա.
և եղդամ: ամենեքեան սոքա որդիք
քետուրայ: *Եւ ծնաւ աբրահամ 34 [Ծննդ. 25.19.]
զիսահակ: և որդիք իսահակայ. եսաւ
և յակոբ: *Եւ որդիք եսաւայ. եղի_ 35 [Ծննդ. 36.10.]
փազ. և հռագուէլ. և յեուղ. և եգ_
ղոմ. և կորէ: *Որդիք եղիփազայ. 36
թեման. և օմար. սոփար. և գոթամ.
և կենեզ: և թամնայ. (հարճ եղիփա
զայ ծնաւ նմա) զամաղէկ: *Եւ որ_ 37
դիք ռագուէլի. նաքեթ. զարեհ. սո_
մէ. և միզէ: *Եւ որդիք սէիրայ. ղո 38
տան. սոբաղ. սեբեգօն. անա. դեսոն.
և ասար. և հռիսոն: *Եւ որդիք ղո_ 39
տանայ. քոռի. և եման. և քոյր ղոտա
նայ, թամնայ: *Որդիք սոբաղայ. գո 40
ղամ. և մանաքաթ. և գեբէլ. և սով
փար. և յօնան: և որդիք սեբեգօնի.
այիա. և անա: և որդիք անայ դեսոն.
(և եղիբամա դուստր անայ:) *Իսկ 41
որդիք դեսոնի. ամրան. և եսբան. և
իթրան. և քերան: *Որդիք եսերայ 42
բիլհան. և յաւան. և յաական. և որ
դիք դեսոնի. ուս. և առան: *Եւ այ 43
սոքիկ թագաւորքն. որք թագաւո
րեցին յեդոմ. յառաջ քան զթագաւո
րել թագաւոր որդւոց իսրայէլի: բաղակ
որդի սեփորայ. և անուն քաղաքի նր

44 դենաբայ: *Եւ մեռաւ բաղակ. և
թագաւորեաց փոխանակ նր յոբաբ
45 որդի զարայի 'ի բոսորայ: *Եւ մե_
ռաւ յոբաբ. և թագաւորեաց փոխա
նակ նր ասոմ. յերկրէն թեմանացւոց:
46 *Եւ մեռաւ ասոմ. և թագաւորեաց
փոխանակ նորա ադադ որդի բարա_
դայ. որ եհար զմադիամ 'ի դաշտին
մովաբայ. և անուն քաղաքի նր գե_
47 թեմ: *Եւ մեռաւ ադադ. և թա_
գաւորեաց փոխանակ նր սամաա, 'ի
48 մասեկկայ: *Եւ մեռաւ սամաա. և
թագաւորեաց փոխանակ նր սաւուղ
յռովբովթայ. որ առ գետեզերբն էր:
49 *Եւ մեռաւ սաւուղ. և թագաւո_
րեաց փոխանակ նր բաղաենոն որդի
50 աքոբովրայ: *Եւ մեռաւ բաղաենոն
որդի աքոբովրայ. և թագաւորեաց
փոխանակ նր ադադ. և անուն քաղա_
քի նորա փոգովր. և անուն կնոջ նր
ամետաբէէլ. դուստր մատրադայ:
51 *Եւ մեռաւ ադադ. և էին իշխանք
եդոմայ: իշխան թամնայ. իշխան
52 գովղայ. իշխան յեթեր: *Իշխան ե_
ղիսակամաս. իշխան եղաս. իշխան
53 փինոն: *Իշխան կենեզ. իշխան թե_
54 ման. իշխան սարսար: *Իշխան մե_
կեդիէլ. իշխան զափոսիիմ: սոքա են
իշխանք եդոմայ:

## Գլ. Բ.

1 Եւ այսոքիկ են անուանք որդ_ [Ծննդ. 29. 32.]
ւոցն իղի. ռուբէն. շմաւօն. ղևի. [30.5. և]
2 յուդա. իսաքար. զաբուղոն: *Դան. [35.22.]
յովսէփ. բենիամին. նեփթաղիմ. գադ.
3 ասեր: *Եւ որդիք յուդայ. էր. և [Ծննդ. 38.3. և 46. 12.]
օնան. սելոմ: երեքեան սոքա ծնան
նմա 'ի դստերէն սաւայ քանանացւոյ.
և էր անդրանիկն յուդայ չար առաջի [illegible] 4. 1.
4 Տն. և սպան զնա: *Եւ թամար նու
նորա ծնաւ նմա զփարէս. և զզարայ. [Ծննդ. 38.29.]
ամենեքեան որդիք յուդայ հինգ:
5 *Եւ որդիք փարէսի եսրոն և հա_ [Մատթ. 1. 3.]
6 մուլ: *Եւ որդիք զարայի զամրի. և
եթան. և եման. և քալքոլ. և դարա. [Յեսու. 7. 1.]
7 ամենեքեան սոքա հինգ: *Եւ որդի
քարմեայ աքար խանգարիչ իղի որ ա_
8 նօրինեցաւ 'ի նզովսն: *Որդի եթա_
9 նայ ազարիա: *Իսկ որդիք եսրոնի. [Հռութ. 4.19.]
որք ծնան նմա. յերմէել. և արամ.
10 և քողբէլ: *Եւ արամ ծնաւ զամի
նադաբ. և ամինադաբ ծնաւ զնաա_
11 սոն զիշխան տանն յուդայ: *Եւ նաա
սոն ծնաւ զսաղմոն: և սաղմոն ծնաւ
12 զբոոս: *Եւ բոոս ծնաւ զովբեդ: և
13 ովբեդ ծնաւ զյեսսէ: *Եւ յեսսէ [Ա Թագ. 16.6.8. 9. և 17 12.]
ծնաւ զեղիաբ զանդրանիկն իւր. և
զամինադաբ երկրորդ. և զսամաա եր_

երկրի են իրաւունք նորա։ 15 *Յիշեաց յաւիտենից զուխտ իւր. զբանն. զոր պատուիրեաց ի հազար ազգս։ 16 *Զուխտն՝ զոր եդ ընդ աբրահամու. և զերդումն իւր ընդ իսահակայ։ 17 *Հաստատեաց զնա յակոբու ի հրամանս. և Իէլի ուխտ յաւիտենական։ 18 *Ասէ. ձեզ տաց զերկիրն քանանու։ վիճակ ժառանգութե ձերոյ։ 19 *Մինչ էին նոքա սակաւք թուով. նուազք և պանդուխտք ի նմա։ 20 *Գնացին յազգէ յազգ. և ի թագաւորութենէ ի ժողովուրդ յայլ։ 21 *Ոչ եթող առն հարստահարել զնս. և կշտամբեաց վասն նց զթագաւորս։ 22 *‖Մի մերձենայք յօծեալս իմ. և ի մարգարէս իմ մի լինիք չար։ 23 *‖Օրհնեցէք զՏր ամ երկիր. պատմեցէք օրըստօրէ զփրկութի նորա։ 24 *Պատմեցէք ի հեթանոսս զփառս նր. յամ ժողովուրդս զսքանչելիս նր։ 25 *Զի մեծ է Տր. և օրհնեալ է յոյժ. ահաւոր է ի վր ամ աստուածոց։ 26 *Զի ամ աստուածք ազգաց կուռք են. և Աձ զերկինս արար։ 27 *Փառք՝ և գովութիւն առաջի երեսաց նորա. զօրութի՝ և պարծանք ի տեղւոջ նր։ 28 *Տուք Տն տոհմք ազանց. տուք Տն զփառս՝ և զզօրութի։ 29 *Տուք Տն զփառս անուան նորա։ առէք պատարագս՝ և մատուցէք առաջի երեսաց նորա. և երկիր պագէք Տն ի սրահս սրբութե նորա։ 30 *Երկիցէ յերեսաց նորա ամ երկիր։ յաջողեսցի երկրի՝ և մի սասանեսցի։ 31 *Ուրախ եղիցին երկինք՝ և ցնծասցէ երկիր։ և ասասցեն ի հեթանոսս, Տր թագաւորեաց։ 32 *Հնչեսցէ ծով լրութեամբ իւրով. փայտք անդաստանի և ամ, որ է ի նմա։ 33 *Յայնժամ ուրախ լիցին ամ ծառք անտառի. զի եկն դատել զերկիր։ 34 *Խոստովան եղերուք Տն զի քաղցր է. զի յաւիտեան է ողորմութի նորա։ 35 *Եւ ասացէք. կեցո զմեզ Աձ փրկութե մերոյ. և ժողովեա զմեզ ի թշնամեաց մերոց։ զի օրհնեսցուք զանուն քո սբ. և պարծիցուք յօրհնութիւս քո։ 36 *Օրհնեալ Տր Աձ Իէլի յաւիտենից մինչև յաւիտեանս. և ասասցէ ամ ժողովուրդն. ամէն։ և օրհնեցին զՏր։ 37 *Եւ եթող անդ առաջի տապանակի կտակարանացն Տն զասափ և զեղբարս նորա. պաշտել առաջի տապանակին յամ ժամ օրըստօրէ։ 38 *Եւ աբդեդոմէի և եղբարքն նր վաթսուն և ութ. և աբդեդոմ որդի իդիթունայ։ և ովսեէ ի դռնապանսն։ 39 *Եւ զսադովկ քահանայ. և զեղբարսն նր զքահանայսն առաջի խորանին Տն ի բամայ՝ որ ի գաբաւոն. 40 *Մատուցանել ողջակէզս Տն ի վերայ սեղանոյ ողջակիզացն հանապազ առաւօտուց և երեկոյին։ և ըստ ամի որ ինչ գրեալ է յօրէնսն Տն՝ զոր պատուիրեաց որդւոցն Իէլի, ի ձեռն մովսէսի ծառային՝ Այ։ 41 *Եւ ընդ նմա եման. և իդիթուն. և այլք ընտրեալք յանուանէ, օրհնել զՏր՝ զի յաւիտեան է ողորմութի նորա։ 42 *Եւ ընդ նոսա փողք՝ և ծնծղայք. նուագել քնարօք երգոցն Այ։ և որդիքն իդիթունայ ի դրանն։ 43 *Եւ գնաց ամ ժողովուրդն իւրաքանչիւրոք ի տուն իւր։ և դարձաւ դաւիթ օրհնել զիւր տունն։

‖ Սաղմ. 104. 15.
‖ Սաղմ. 95. 1.

## Գլ: ԺԷ:

1 Եւ‖ եղև իբրև բնակեցաւ դաւիթ ի տան իւրում. ասէ դաւիթ ցնաթան մարգարէ։ ահա ես բնակիմ ի տան մայրփայտից. և տապանակն Այ է ընդ վրանօք։ 2 *Եւ ասէ նաթան ցդաւիթ. զամ, որ ինչ է յանձին քում, արա. վասն զի Աձ ընդ քեզ է։ 3 *Եւ ի գիշերին յայնմիկ եղև բան Տն առ նաթան՝ և ասէ։ 4 *Երթ՝ և ասա ցդաւիթ ծառայ իմ։ այսպէս ասէ Տր. ոչ շինեսցես դու ինձ տուն բնակելոյ ի նմա։ 5 *Վասն զի ոչ երբէք բնակեցայ ի տան՝ յօրէ յորմէ հանի զԻէլ յեգիպտոսէ մինչև յօրս յայս։ և խորանաւ ի վայրաքնակս։ 6 *Ամենայն ուրեք՝ ընդ որ անցին որդիքն Իէլի. եթէ խօսելով խօսեցայ ընդ միում ի ցեղիցն Իէլի. և ի դատաւորացն նր. որոց պատուիրեցի հովուել ժողովրդեան իմոյ՝ և ասացի. ընդէր ոչ շինեցիք ինձ տուն ի մայր փայտից։ 7 *Եւ արդ՝ այսպէս ասասցես ցծառայ իմ դաւիթ։ այսպէս ասէ Տր ամենակալ։ առի զքեզ ի վերջէ վանաց հովուացն. առ ի լինել առաջնորդ ժողովրդեան իմում Իէլի։ 8 *Եւ էի ընդ քեզ ամ ուրեք՝ ուր և երթայիր։ և սատակեցի զամ թշնամիսն քո յերեսաց քոց. և արարի քեզ անուն ըստ անուան մեծամեծաց՝ որք ի վր երկրի։ 9 *Եւ արդ եդից զտեղի ժողովրդեան իմոյ Իէլի. և տնկեսցես զդա. և բնակեսցի առ անձինն. և ոչ ևս հոգասցէ ինչ. և ոչ ևս յաւելցի անիրաւութի խոնարհեցուցանել զդա որպէս ի սկզբանն։ 10 *Եւ յաւուրցն, յորոց կարգեցի դատաւորս ի վր ժողովրդեան իմոյ Իէլի, նկուն արարի զամ թշնամիս քո. և արդ՝ աճեցուցից զքեզ. և շինեցից զքեզ ես Տր։ 11 *Եւ եղիցի յորժամ լցցին աւուրք քո. քունեսցես ընդ հարս քո։

‖2 Թագ. 7. 2.
այլ խո_րանաւ
տնկեցից

քո։ և յարուցից զզաւակ քո յետ քո. որ եղիցի յորովայնէ քումմէ։ և պատրաստեցից զթագաւորութի նր։ 12 *Նա շինեսցէ ինձ տուն։ և ուղղեցից զաթոռ նորա յաւիտեան։ 13 *Ես եղէց նմա 'ի հայր. և նա եղիցի ինձ յորդի. և զողորմութիւն իմ ոչ արարից 'ի բաց 'ի նմանէ. որպէս մերժեցի յայնցանէ. որք յառաջ քան զքեզ էին։ 14 *Եւ հաւատարիմ լիցի նա 'ի տան իմում։ և թագաւորութի նորա մինչև յաւիտեան. և աթոռ նր եղիցի ուղղեալ մինչև յաւիտեան։ 15 *Ըստ ամ բանիցս այսոցիկ. և ըստ ամ տեսլեանս այսորիկ. նոյնպէս խօսեցաւ Նաթան ընդ դաւթի։ 16 *Եւ եկն արքայ դաւիթ. նստաւ առաջի Տն և ասէ. ո՞վ եմ ես Տր Ած. և կամ զի՞նչ տուն իմ. զի սիրեցեր զիս մինչև յաւիտեան։ 17 *Եւ ոչ փոքրկացան այսոքիկ առաջի քո Ած. խօսեցար յաղագս տան ծառայի քոյ յերկարագոյն։ և հայեցար դու յիս տեսլեամբ մարդոյ։ բարձրացուցեր դու զիս Տր Ած։ 18 *Եւ զի՞նչ ևս յաւելցի դաւիթ փառաւորել զքեզ։ դու գիտես զծառայ քո։ 19 *Ըստ սրտի քում արարեր զամ զմեծութի քո Տր։ 20 *Ոչ ոք է նման քեզ. և ոչ ոք գոյ բաց 'ի քէն. ըստ ամի զորս լուաք ականջօք մերովք։ 21 *Եւ ոչ ոք է իբրև զժողովուրդ քո իէլ ազգ 'ի վր երկրի. որում առաջնորդեաց նմա Ած փրկել իւր ժողովուրդ. և դնել զանուն իւր մեծ և երևելի։ հանել յերեսաց ժողովրդեան քոյ. զոր փրկեցեր յեգիպտոսէ, զազգսն։ 22 *Եւ եդեր զժողովուրդ քո իէլ, 'ի ժողովուրդ քեզ յաւիտեան. և դու եղեր նոցա Ած։ 23 *Եւ արդ Տր. զբանն, զոր խօսեցար ընդ ծառայի քում՝ և յաղագս տան նորա. հաստատեսցի մինչև յաւիտեան։ 24 *Որ ասացեր Տր. Տր ամենակալ՝ Ած իէլի. եթէ տուն դաւթի ծառայի քոյ ուղղեալ եղիցի առաջի քո։ 25 *Վզի դու Տր բացեր զունկն ծառայի քոյ շինել քեզ տուն. յաղագս այսորիկ եգիտ ծառայ քո կալ յաղօթս առաջի քո։ 26 *Եւ արդ Տր. դու ես Ած. և խօսեցար վն ծառայի քոյ զբարիսդ զայդոսիկ։ 27 *Սկսիր այսուհետև օրհնել զտուն ծառայի քոյ. լինել առաջի քո յաւիտեան։ վզի դու Տր օրհնեցեր. և օրհնեա՛ յաւիտեան։

յայտ- նեցեր յունկն

## ԳԼ. ԺԸ.

2 Թագ. Ը. 1.

1 Եւ եղև յետ այսորիկ՝ եհար դաւիթ զայլազգին. և վանեաց զնոսա. և էառ զգէթ՝ և զգեօղս նր 'ի ձեռաց այլազգեացն։ 2 *Եւ եհար զմովաբ. և էին մովաբացիքն ծառայք դաւթի բերել ընծայս։ 3 *Եւ եհար դաւիթ զադրաազար արքայ սուբայյեմաթ. յերթալ նր հաստատել զձեռն իւր 'ի վր գետոյն եփրատայ։ 4 *Եւ էառ դաւիթ զնր հազար կառս՝ և եօթն հազար ձիոյ՝ և եօթն հազար արանց հետևակաց. և բակեաց դաւիթ զամ զկառսն. և եթող 'ի նոցանէ հարիւր կառս։ 5 *Եւ եկն ասորին 'ի դամասկոսէ օգնել ադրաազարու արքային սուբայ. և եհար դաւիթ յասորւոցն քսան և երկուս հազարս արանց։ 6 *Եւ եդ դաւիթ ամրոց յասորիս 'ի դամասկոսի. և էին դաւթի ծառայք բերել նմա ընծայս. և ապրեցոյց Տր զդաւիթ յամ տեղիս. ուր և երթայր։ 7 *Եւ էառ դաւիթ զմանեակսն ոսկեղէնս. որք էին 'ի ծառայսն ադրաազարայ. և եբեր զայնս յեմ։ 8 *Եւ 'ի մատեբեթայ, և յընտիր քաղաքացն ադրաազարայ էառ դաւիթ պղինձ բազում յոյժ. և 'ի նոցանէ արար սողոմոն զծովն պղնձի. և զսիւնսն. և զկահսն պղնձիս։ 9 *Եւ լուաւ թովու արքայ եմաթայ՝ եթէ եհար դաւիթ զամ զօրութիւն ադրաազարայ արքայի սուբայ։ 10 *Եւ առաքեաց զդուրամ զորդի իւր առ արքայ դաւիթ, հարցանել զնմանէ 'ի խաղաղութի. և օրհնել զնա. վասն զի պատերազմ տայր ադրաազար ընդ նմա. և եհար զնա. քանզի այր թշնամի էր թովու ադրաազարայ։ և ամենայն անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք 'ի ձեռս նր։ 11 *Եւ զայնոսիկ օրհնեաց դաւիթ Տն, ընդ արծաթոյն և ոսկւոյ. զոր էառ յամենայն ազգացն յեդովմայ, և 'ի մովաբայ. և յորդւոցն ամոնայ. և յայլազգեացն. 12 և յամաղեկայ։ *Եւ աբեսսա որդի սարուեայ եհար զեդոմ 'ի հովտին աղոնայ՝ ութն և տասն հազար։ 13 *Եւ եդ 'ի հովտին ամրոց. և էին եդոմայեցիքն ծառայք դաւթի. և փրկեաց Տր զդաւիթ յամենայն տեղիս. ուր և երթայր։ 14 *Եւ թագաւորեաց դաւիթ 'ի վերայ ամենայն իէլի. և էր առնել իրաւունս և արդարութի ամենայն ժողովրդեան իւրում։ 15 *Եւ յովաբ որդի սարուեայ 'ի վերայ զօրացն. և յօսափատ որդի աքիղուդայ յիշատակագիր։ 16 *Եւ սադովկ որդի աքիտոբայ. և աքիմելէք որդի աբիաթարայ քահանայք. և սուսա դպրապետ։ 17 *Եւ բանեաս որդի յովիդայեայ 'ի վր քերեթայն և ոփելեթայն. և որդիքն դաւթի առաջինք փոխանորդք արքայի։

20000

ԳԼ.

## ԳԼ: ԺԹ:

‖2 Թագ. 10. 1.

1 Եւ ‖ եղեւ յետ այսորիկ մեռաւ Նաաս արքայ որդւոցն Ամոնայ . եւ թագաւորեաց Անան որդի նորա ընդ նորա : 2 * Եւ ասէ Դաւիթ . արասցուք ողորմութիւն ընդ Անանայ որդւոյ Նաասայ . որպէս արար հայր նորա ընդ իս ողորմութիւն : Եւ առաքեաց հրեշտակս Դաւիթ մխիթարել զնա վասն հօրն իւրոյ . եւ եկին ծառայքն Դաւթի յերկիր որդւոցն Ամոնայ մխիթարել զնա : 3 * Եւ ասեն իշխանքն Ամոնայ ցԱնան . միթէ փառաւորել Դաւիթ զհայր քո առաջի քո առաքեաց քեզ զմխիթարիչսդ . ոչ ապաքէն զի քննեսցեն զքաղաքս . եւ դիտել զերկիրս եկին ծառայքդ նորա առ քեզ : 4 * Եւ էառ Անան զծառայսն Դաւթի՝ եգերծ զնոսա . եւ եհատ զդրօշակսն նոցա զհասարակածն մինչեւ 'ի մէջ . եւ արձակեաց զնոսա : 5 * Եւ եկին պատմել Դաւթի վասն արանցն : առաքեաց ընդ առաջ նոցա . վասն զի էին ամաչեցեալք յոյժ . եւ ասէ արքայ . Նստարուք յԵրիքով մինչեւ աճեսցին մօրուք ձեր . եւ ապա եկեսջիք : 6 * Եւ տեսին որդիքն Ամոնայ եթէ ամաչեաց զօրն Դաւթի՝ առաքեաց Անան եւ որդիքն Ամոնայ հազար տաղանդ արծաթոյ . եւ 'ի վարձու կալան իւրեանց յԱսորեաց Միջագետաց . եւ յԱսորեաց Մաաքայ եւ Սուբայ՝ կառս՝ եւ հեծեալս : 7 * Եւ 'ի վարձու կալան իւրեանց երեսուն եւ երկուս հազարս կառաց . եւ զարքայն Մօաքայ . եւ զզօրն նորա . եւ եկին՝ բանակեցան յանդիման Մեդաբայ . եւ որդիքն Ամոնայ ժողովեցան 'ի քաղաքացն իւրեանց . եւ եկին պատերազմել : 8 * Լուաւ Դաւիթ . առաքեաց զՅովաբ եւ զգունդ զօրաւորացն : 9 * Եւ ելին որդիքն Ամոնայ՝ եւ ճակատեցան 'ի պատերազմ առ դրան քաղաքին . եւ թագաւորքն եկեալք բանակեցան առանձինն 'ի դաշտին : 10 * Եւ ետես Յովաբ եթէ եղեն դէմ յանդիման պատերազմել ընդ նմա առաջի երեսաց եւ զկնի . ընտրեաց յամենայն երիտասարդացն Իսրայէլի . եւ կարգեաց ընդդէմ Ասորւոցն : 11 * Եւ զմնացորդս զօրուն ետ 'ի ձեռս Աբեսսայ եղբօրն իւրոյ . եւ կարգեաց ընդդէմ որդւոցն Ամոնայ : 12 * Եւ ասէ՝ եթէ զօրասցին քան զմեզ Ասորիքն, լինիցիս մեզ 'ի փրկութիւն . եւ եթէ որդիքն Ամոնայ զօրասցին քան զքեզ, ապրեցուցից զքեզ : 13 * Քաջ լեր՝ եւ զօրասցուք վասն ժողովրդեան մերոյ : եւ վասն քաղաքացն Աստուծոյ մերոյ . եւ Տէր՝ որ ինչ բարի իցէ յաչս նորա, արասցէ : 14 * Եւ ճակատեցաւ Յովաբ եւ զօրն նորա ընդդէմ Ասորեացն 'ի պատերազմին . եւ փախեան 'ի նմանէ : 15 * Եւ որդիքն Ամոնայ տեսին՝ եթէ փախեան Ասորիքն՝ փախեան եւ նոքա յերեսաց Յովաբայ . եւ յերեսաց Աբեսսայ եղբօրն նորա : եւ մտին 'ի քաղաքն . եւ եկն Յովաբ յԵրուսաղէմ : 16 * Եւ ետես Ասորին եթէ յաղթեաց նմա Իսրայէլ . առաքեաց հրեշտակս . եւ եհան զԱսորեստանեայսն յայնմ կողմանէ գետոյն . եւ զՍոփաք զօրավար զօրուցն Ադրաազարայ առաջի նոցա : 17 * Եւ պատմեցին Դաւթի . գումարեաց զամենայն Իսրայէլ . էանց ընդ Յորդանան՝ եւ եկն 'ի վերայ նոցա՝ եւ ճակատեցաւ ընդդէմ նոցա . եւ կարգեցաւ Դաւիթ ընդդէմ Ասորւոցն . եւ պատերազմէր ընդ նմա : 18 * Եւ փախեաւ Ասորին յերեսաց Դաւթայ . եւ կոտորեաց Դաւիթ յԱսորեացն եօթն հազար կառաց . եւ քառասուն հազար հետեւակաց . եւ զՍոփաք զօրավար զօրուցն սպան : 19 * Եւ տեսին ծառայքն Ադրաազարայ եթէ անկան առաջի Իսրայէլի . եդին ուխտ ընդ Դաւթի եւ ծառայեցին նմա . եւ ոչ եւս կամեցաւ Ասորին օգնել որդւոցն Ամոնայ :

## ԳԼ: Ի:

‖2 Թագ. 10. 7. եւ 11. 1.

1 Եւ ‖ եղեւ 'ի մտանել տարւոյն յելանել թագաւորացն՝ էած Յովաբ զամենայն գունդս զօրացն . եւ ապականեաց զերկիր որդւոցն Ամոնայ : եկին, եւ նստան շուրջ զՀռաբաթաւ . եւ Դաւիթ նստէր յԵրուսաղէմ . եւ էառ Յովաբ զՀռաբաթ . եւ կործանեաց զնա : 2 * Եւ էառ Դաւիթ զպսակն Մողքոմայ թագաւորին նոցա 'ի գլխոյն նորա . եւ գտաւ կշիռ նորա տաղանդ ոսկւոյ . եւ 'ի նմա ակն պատուական . եւ էր 'ի գլուխն Դաւթի . եւ աւար քաղաքին յոյժ եբեր : 3 * Եւ զժողովուրդն . որ էր 'ի նմա՝ եհան . եւ սղոցեաց սղոցօք եւ ուրագօք երկաթեօք . եւ այնպէս արար Դաւիթ ամենայն քաղաքաց որդւոցն Ամոնայ . եւ դարձաւ Դաւիթ՝ եւ ամենայն զօրն իւր յԵրուսաղէմ : 4 * ‖ Եւ յետ այնորիկ եղեւ միւսանգամ պատերազմ 'ի Գազեր ընդ այլազգիսն . յայնժամ եհար Սոբաքայ Էուսաթացի զՍեփփաս յորդւոց սկայիցն՝ եւ վանեաց զնա : 5 * Եւ եղեւ դարձեալ պատերազմ ընդ այլազգիսն . եւ եհար Եղեանան որդի Յայիրայ զԼեհեմի զեղբայրն Գողիաթու Գեթացւոյ . եւ փայտ նիզակի նորա իբրեւ զտորի ոստայնանկաց : 6 * Եւ եղեւ դարձեալ պատերազմ 'ի Գեթ . եւ էր այր մի մեծ յոյժ . եւ մատունք նորա վեց վեց . քսան եւ չորք . եւ նա էր

‖2 Թագ. 21. 18.

յորդ-

յորդւոց սկայիցն ։ * Եւ՛ թշնամանէր 7
զԻղ̃լ. և եհար զնա յովնաթան որդի
սամայայ. որդի եղբօր դաւթի ։ սոքա
եղեն հռափայ 'ի գէթ. ամենեքեան
էին արք հսկայք. և անկան 'ի ձեռս
դաւթի, և 'ի ձեռս ծառայից նր̃ ։

## Գլ ։ ԻԱ ։

Բ Թագ. 24.1. Մ այր. 27.24.

Եւ՛ եկաց բանսարկու 'ի մէջ Իղ̃ի. 1
և դրդուեցոյց զդաւիթ թուել
զԻսրայէլ ։ * Եւ՛ ասէ դաւիթ ցյո 2
վաբ՝ և ցիշխանս զօրուն. երթայք
թուեցէք զԻղ̃լ 'ի բերսաբէէ մինչև
ցդան. և բերէք առ իս. և գիտացից
զթի՛ւ նց̃ ։ * Եւ՛ ասէ յովաբ. յաւել 3
ցէ Տր̃ 'ի ժողովուրդ իւր. որպէս են
դոքա՝ հարիւրապատիկ. և աչք Տն̃
իմոյ տեսանեն. զի ամենեքեան ծա
ռայք են Տն̃ իմոյ. և ընդէ՞ր խնդրէ
տէր իմ զայդ. զի մի՛ լինիցի մեղք 'ի
ժողովրդեանդ Իղ̃ի ։ * Եւ՛ բան ար 4
քայի զօրացաւ 'ի վերայ յովաբայ. և
ել յովաբ. և եկն յա̃մ սահմանսն Իղ̃ի.
և եկն յերուսաղէմ ։ * Եւ ետ յովաբ 5
զթի՛ւ համարոյ ժողովրդեանն դաւ
թի. և էր ա̃մ իսրայէլ հազարք հա
զարաց. և հարիւր հազար արանց. որք
ձգէին սուսերս. և յուդաս չորեքհա
րիւր և յիսուն հազար արանց սուսե
րաւորաց ։ * Բայց զղևի և զբենիա 6
մին ոչ թուեաց 'ի մէջ նոցա. վասն
զի տաղտկացաւ բանն արքայի առ յո
վաբ ։ * Եւ՛ չար երևեցաւ առաջի Ա̃Ծ 7
վասն իրացն այնոցիկ. և եհար զԻղ̃լ ։
* Եւ՛ ասէ դաւիթ ցԱ̃Ծ. մեղայ յոյժ. 8
զի արարի զիրդ զայդ. և արդ՝ 'ի բաց
բարձ զչարութ̃ի ծառայի քոյ. վասն
զի ընդունայնացայ յոյժ ։ * Եւ՛ խօսե 9
ցաւ Տր̃ ընդ գադայ տեսանողի առ
դաւիթ՝ և ասէ ։ * Երթ՝ խօսեաց ը̃ 10
դաւթի՝ և ասասցես. այսպ̃ ասէ Տր̃.
երիս ինչս ես ասեմ՝ ի վ̃ր քո. ընտրեա՛
անձին քում 'ի նոցանէ՝ և արարից
քեզ ։ * Եւ՛ եկն գադ առ դաւիթ՝ և 11
ասէ ցնա. այսպէս ասէ Տր̃. ընտրեա՛
քեզ ։ * Կամ երիս ամն սով՝ կամ զե 12
րիս ամիս փախչիլ քեզ յերեսաց թշ
նամեայ քոց. և սուր թշնամեաց քոց
եղիցի 'ի սատակել զքեզ ։ կամ զերիս
աւուրս սուր Տն̃ և մահ յերկրի քում.
և հրեշտակ Տն̃ սատակեսցէ յա̃մ ժա
ռանգութ̃իս Իղ̃ի. և արդ՝ տես զի՞նչ
բան տաց պատասխանի. որ առա
քեացն զիս ։ * Եւ՛ ասէ դաւիթ ցգադ. 13
նեղութ̃ի է ինձ յոյժ երեքեան այդո
քիկ. բայց անկայց 'ի ձեռս Տն̃. վ̃զի
բազում են գթութ̃իք նորա յոյժ. և
'ի ձեռս մարդկան մի՛ անկայց ։ * Եւ 14

ետ Տէր մահ յԻղ̃լ. և անկան յիս
րայէլէ եօթանասուն հազար արանց ։
15 * Եւ՛ առաքեաց Ա̃Ծ զհրեշտակն յե
րուսաղէմ սատակել զնա. և մինչդե
սատակէր. ետես Տր̃. և զղջացաւ 'ի վ̃ր
չարութ̃ենն. և ասէ ցհրեշտակն. որ
սատակէր. շատ լիցի քեզ. թուլացո՛
զձեռն քո. և հրեշտակ Տն̃ կայր 'ի
16 կալն ոռնայ յեբուսացւոյ ։ * Ա̃մբարձ
դաւիթ զաչս իւր, և ետես զհրեշ
տակն Տեառն. զի կայր 'ի մէջ երկնի և
երկրի. և սուրն իւր ձգեալ 'ի ձե
ռին իւրում. և կարկառեալ 'ի վերայ
երուսաղէմի. և անկան՝ դաւիթ և
ծերքն զգեցեալ քուրձ՝ 'ի վերայ երե
17 սաց իւրեանց ։ * Եւ ասէ դաւիթ ցԱ̃Ծ.
ո՛չ ապաքէն ես ասացի թուել զժողո
վուրդդ. ես եմ, որ մեղայն. առնելով
արարի զչարիսդ. և ոչխարքդ այդո
քիկ զի՞ արարին. Տր̃ Ա̃Ծ եղիցի ձեռն
քո յիս. և 'ի տուն հօր իմոյ. և մի՛ 'ի
ժողովուրդ քո կորուսանել՝ Տէր ։
18 * Եւ՛ ասէ հրեշտակն Տն̃ ցգադ. ասա
ցդաւիթ. զի ելցէ, կանգնեսցէ զսե
ղան Տն̃ 'ի կալն ոռնայ յեբուսացւոյ ։
19 * Եւ՛ ել դաւիթ ըստ բանին Տն̃. զոր
20 խօսեցաւ յանուն Տն̃ ։ * Եւ՛ դարձաւ
ոռնայ. ետես զարքայ և զչորեսեան
որդիսն նորա ընդ նմա ծածկեալս.
21 և ոռնայ կասոյր 'ի կալն ցորեան ։ * Եւ՛
եկն դաւիթ առ ոռնայ. և ել ոռնայ
'ի կալոյն. երկիր եպագ դաւթի 'ի
22 վերայ երեսաց իւրոց յերկիր ։ * Եւ՛
ասէ դաւիթ ցոռնայ. տո՛ւր ինձ զտե
ղիդ քո զայդ զկալդ. և շինեցից այդր
սեղան Տն̃ արծաթոյ, որքան ար
ժան իցէ. տացես ինձ զդա. և դադա
րեսցին հարուածքն 'ի ժողովրդենէն ։
23 * Եւ՛ ասէ ոռնա ցդաւիթ. ա՛ռ դու
քեզ. և արասցէ տէր իմ արքայ զհա
ճոյ առաջի իւր ։ ահա ետու քեզ զե
զինսդ յողջակէզս. և զփայտ սայլիցդ
և զցորեանդ 'ի զոհս. զամենայն ետու
24 քեզ ։ * Եւ՛ ասէ արքայ դաւիթ ցոռ
նայ՝ ո՛չ այդպ̃. այլ գնելով գնեցից ար
ծաթոյ. որքան արժան իցէ. և ոչ ա
ռից՝ որինչ է քո. մատուցանել ողջա
25 կէզս ձրի Տն̃ ։ * Եւ՛ ետ դաւիթ ցոռ
նայ վասն տեղւոյն նորա՝ վեցհարիւր
26 սիկղ ոսկւոյ կշռով ։ * Եւ՛ շինեաց դա
ւիթ անդ սեղան Տն̃. և եհան ողջա
կէզս՝ և վասն փրկութ̃ե. և գոչեաց
առ Տր̃. և լուաւ հրով յերկնից նմա 'ի
վ̃ր սեղանոյ ողջակիզին. և ծախեաց
27 զողջակէզսն ։ * Եւ՛ ասէ Տր̃ ցհրեշ
տակն. դարձո՛ զսուրդ 'ի պատեանս ։
28 * 'Ի ժամանակին յայնմ 'ի տեսանելն
զնա դաւթի. վ̃զի լուաւ նմա Տր̃ 'ի
կալն

կալն ունայ յերուսաղեմ․ և եղեն անդ զոհս։ 29 *‖ Եւ խորանն Տն, զոր արար մովսէս յանապատին․ և սեղան ողջակիզացն 'ի ժամանակին յայնմ էին 'ի բամայ գաբաւոնի։ 30 * Եւ ոչ կարէր դաւիթ երթալ առաջի նորա խնդրել զԱ․Ծ․ վասնզի տագնապե֊ցաւ յերեսաց սրոյ հրեշտակին Տն։

‖ Ղւէց. 36.2.

## Գլ։ ԻԲ։

1 Եւ ասէ դաւիթ․ այս է տուն Տն Այ․ և այս սեղան ողջակիզաց Իլի։ 2 * Եւ ասաց դաւիթ ժողովել զամ եկսն յերկրէն Իլի։ և կացոյց քարա֊հատս հատանել քարինս կոփածոյս՝ և շինել զտունն Ա․Ծ․ 3 * Եւ երկաթ բազում 'ի բևեռս դրացն՝ և դրանն․ և զշրջանակսն արար դաւիթ․ և պղինձ բազում յոյժ․ որոյ ոչ գոյր կշիռ։ 4 * Եւ մայր փայտս․ որոյ ոչ գոյր թիւ․ վասնզի բերէին սիդոնացիքն․ և տիւրացիք մայր փայտս յաճախութի դաւթի։ 5 * Եւ ասէ դաւիթ․ սաղոմոն որդի իմ մանուկ փոքր է․ և տունն՝ զոր շինէ Տն․ մեծ է 'ի վեր անուամբ՝ և 'ի փառս ամ երկրի․ պատրաստեցից նմա նիւթս․ և պատրաստեաց դաւիթ յաճախու֊թբ յառաջ քան զվախճանն իւր։ 6 * Եւ կոչեաց զսաղոմոն որդի իւր․ և պատուիրեաց նմա շինել զտուն ան֊ուան Տն Ա․Ծ Իլի։ 7 * Եւ ասէ դաւիթ ցսաղոմոն, որդեակ իմ․ եղև 'ի միտ իմում շինել տուն անուան Տն Ա․Ծ։ 8 * Եւ բան Տն եղև առ իս՝ և ասէ․ ա֊րիւն բազում հեղեր․ և պատերազ֊մունս մեծամեծս արարեր․ ոչ շինես֊ցես դու տուն անուան իմոյ․ վասնզի արիւն բազում հեղեր 'ի վր երկրի ա֊ռաջի իմ։ 9 * Ահա ծնցի քեզ որդի․ և նա եղիցի այր հանգստեան․ և հան֊գուցից զնա յամ թշնամեաց շուրջա֊նակի․ քանզի սաղոմոն անուն է նր․ և զխաղաղութի և զհանգարտութի տաց 'ի վերայ Իլի յաւուրս նր։ 10 *‖ Նա շի֊նեսցէ տուն անուան իմոյ․ նա եղիցի ինձ յորդի․ և ես եղէց նմա 'ի հայր․ և ուղղեցից զաթոռ թագաւորութե նր յԻլի մինչև յաւիտեան։ 11 * Եւ արդ՝ որդեակ իմ․ եղիցի ընդ քեզ Տր․ և յա֊ջողեսցէ․ և շինեսցես տուն Տն Ա․Ծ քոյ․ ոպ խօսեցաւ վասն քո։ 12 * Եւ տա֊ցէ քեզ իմաստութի և հանճար Տր․ և զօրացուսցէ զքեզ 'ի վր Իլի․ և պա֊հեսցես առնել զօրէնսն Տն Այ քոյ։ 13 * Եւ յայնժամ յաջողեսցիս, եթէ պա֊հեսցես առնել զհրամանսն՝ և զիրաւ֊ունս․ զոր պատուիրեաց Տր մովսեսի 'ի վր Իլի․ քաջ լեր՝ և զօրացիր․ մի եր֊կնչիր՝ և մի զարհուրիցիս։ 14 * Եւ ահա ես ըստ աղքատութե իմում պատրաս֊տեցի ոսկի 'ի տուն Տն տաղանդս հա֊րիւր հազար․ և արծաթ տաղանդս հազարս հազար․ և պղինձ․ և երկաթ՝ որոյ ոչ գոյ թիւ․ վասնզի բազում է յոյժ․ և փայտս՝ և քարինս՝ պատրաս֊տեցի։ 15 * Եւ դու յաւելցես յայդ բազ֊մութի առնել գործ արուեստից․ շի֊նօղս քարանց․ և հիւսունս փայտից․ և ամ իմաստուն յամենայն գործ։ 16 * Ոսկւոյն՝ և արծաթոյն․ և պղնձոյ՝ և երկաթոյ․ որոյ ոչ գոյ համար։ արդ՝ արի․ և արա․ վասնզի Տէր ընդ քեզ է։ 17 * Եւ պատուիրեաց դաւիթ ամ իշխա֊նացն Իլի՝ օգնել սաղոմոնի որդւոյ իւրում։ 18 * Եւ ասէ․ ոչ ապաքէն Տր ընդ ձեզ է․ և հանգոյց զձեզ շուրջա֊նակի․ վասնզի ետ 'ի ձեռս ձեր զբնակիչս երկրիդ․ և հնազանդեցաւ երկիրդ առաջի Տն․ և առաջի ժողովրդեան նր։ 19 * Եւ արդ՝ տուք զսիրտս ձեր՝ և զանձինս ձեր՝ խնդրել զՏր Ա․Ծ ձեր․ արիք՝ և շինեցէք զսրբութիս Տն Այ մերոյ․ տանել 'ի ներքս զտապանակ ուխտին Տն՝ և զսպաս սրբութեցն Այ 'ի տունն․ զոր շինէք անուան Տն։

## Գլ։ ԻԳ։

1 Եւ դաւիթ էր ծեր՝ և լի աւուրբք․ և թագաւորեաց զսաղոմոն որդի նր փոխանակ նր 'ի վերայ Իլի։ 2 * Եւ ժողովեաց զամ իշխանսն Իլի․ և զքա֊հանայս՝ և զղևտացիս։ 3 * Եւ մտին՝ 'ի թիւն ղևտացիքն յերեսնամենից և 'ի վեր․ և եղև թիւն նոցա ըստ գլխոց իւրեանց՝ արք ութ հազար և երե֊սուն։ 4 * Եւ 'ի նոցանէ գործավարք 'ի վերայ գործոյ տանն․ և քսան և չորք հազարք դպիրքն․ և դատաւորք վեց հազար։ 5 * Եւ չորք հազարք դռնա֊պանք․ և չորք հազարք օրհնիչք Տն․ նուագարանօքն որովք արարին օրհ֊նել զՏր։ 6 *‖ Եւ որոշեաց զնս դա֊ւիթ յօրըստօրէ պաշտամունս․ զգեր֊դսոն ղևեայ․ զգերսոմն․ և զկահաթ․ և զմերարի։ 7 * Եւ գերսոն․ և եղիա֊դան․ և սեմէի։ 8 * Որդի եղիադանայ իշխան իէլ։ և եթոմ․ և յովել։ 9 * Եւ որդիքն սեմեայ․ սաղոմիթ․ և ազիէլ․ և արան․ երեք սոքա իշխանք տոհմիցն եղիադանայ։ 10 * Եւ որդիքն սեմեայ․ յեթ՝ և զիզա․ և յովաս․ և բերիայ․ սոքա որդիք սեմեայ չորք։ 11 * Եւ էր յեթ իշխան․ և զիզա երկրորդ․ և յո֊վաս․ և բերիա՝ ոչ յաճախեցին որդիս․ և եղեն 'ի տուն տոհմին 'ի միում՝ հա֊մարի։ 12 * Որդիք կահաթու․ ամրամ․ և

3800․

‖ Ա Մնաց. 6.1.
Ղւէց. 6.17.

‖ Բ Թագ. 7.13.
Գ Թագ. 5.5.

և խահաթու. քեբրոն. և ոզիէլ՝ չորք։ 13 *‖Որդիք ամրամայ. ահարոն. և մովսէս. ‖և որոշեցաւ ահարոն սուրբ լինել 'ի սրբութիւն սրբութեանցն՝ ինքն և որդիք իւր մինչև յաւիտեան. ծխել խունկս առաջի Տն. պաշտել՝ և աղօթս առնել յանուն նր մինչև յաւիտեան։ 14 *Եւ մովսէս այրն Այ. և որդիքն նր կոչեցան 'ի ցեղն ղևեայ։ 15 *‖Որդիք մովսէսի. գերսամ. և եղիազար։ 16 *Որդիք գերսամայ. սուբայէլ։ 17 *Եւ էր որդի եղիազարու հռաբիա իշխան։ և ոչ գոյր այլ որդի եղիազարու՝ և որդիքն հռաբիայ աճեցին 'ի բարձրութիւն։ 18 *Որդիք սահառայ. սաւուղ. և մօէ իշխանք։ 19 *Որդիք քեբրոնի. յերիայ իշխան. և ամարիայ երկրորդ. և ոզիէլ երրորդ. և յեկլիմաս չորրորդ։ 20 *Որդիք ոզիէլի. միքիա իշխան. և յեսիաս երկրորդ։ 21 *Որդիք մերարեայ, մոողի. և մուսի. որդիք մոողեայ. եղեազար. և կիս։ 22 *Եւ մեռաւ եղէազար. և ոչ գոյին նր որդիք. այլ դստերք միայն. և առին զնոսա որդիքն կիսեայ, եղբարքն իւրեանց։ 23 *Որդիք մուսեայ. մոողի. և եդեր. և արիմօթ. երեք։ 24 *Այսք որդիք ղևեայ ըստ տանց տոհմից իւրեանց. իշխանք ցեղիցն իւրեանց. ըստ համարոյ իւրեանց. և ըստ թուոյ անուանց. ըստ գլխոյն իւրեանց առնէին զգործ պաշտաման 'ի տան Տն 'ի քսանամենից և 'ի վեր։ 25 *Զանզի ասաց դաւիթ. հանգոյց Տր Ի՞Ղ զինէ զժողովուրդ իւր. և բնակեցաւ մինչև յաւիտեան։ 26 *Եւ ղևտացիքն ոչ բառնային ամենեքեան զխորանն՝ և զամ սպասս նր 'ի պաշտաման նորին։ 27 *Զանզի 'ի բանսն դաւթայ 'ի վերջինսն, էր թիւ որդւոցն ղևեայ 'ի քսանամենից և 'ի վեր։ 28 *Քանզի կացոյց զնոսա 'ի ձեռն որդւոցն ահարոնի պաշտել 'ի տան Տն 'ի սրահսն՝ և 'ի սենեակսն. և 'ի սրբութիւնս. և 'ի վր ամ սրբութեանցն. և 'ի պաշտամունսն տանն Այ։ 29 *Հացին զառաջադրութե. և 'ի վր նաշհոյ պատարագացն. և քաքարացն. բաղարջացն. և տապակին. և զանդեղոյն իւղով. և յամ չափսն։ 30 *Կալ առաւօտուցն. օրհնել և խոստովան լինել Տն։ նոյնպէս և ընդ երեկս։ 31 *Եւ 'ի վերայ ամենայն մատուցելոց ողջակիզաց Տն 'ի շաբաթսն. և յամսամուտս. և 'ի տօնս. ըստ թուոյն. ըստ իրաւանցն. 'ի վերայ նոցին յամենայն ժամ Տն։ 32 *Եւ պահեսցեն զպահպանութիւնս խորանին վկայութեան. և զպահպանութիւնս որդւոցն ահարոնի եղբարցն իւրեանց պաշտել 'ի տանն Տն։

‖ Ելից. 6.20. ‖ Եբրայ. 5.4. ‖ Ելից. 2.22. և 18.3.

## Գլ. ԻԴ.

1 Եւ զորդիս ահարոնի զատոյց։ որդիք ահարոնի. նադաբ. և աբիուդ. և եղիազար. և իթամար։ 2 *‖Եւ մեռան նադաբ. և աբիուդ առաջի հօրն իւրեանց. և որդիք ոչ գոյին նց. և քահանայացան եղիազար 3 և իթամար որդիքն ահարոնի։ *Եւ զատոյց զնս դաւիթ. զսադովկ յորդւոյն եղիազարու՝ և զաքիմելէք յորդւոյն իթամարայ. ըստ համարոյն իւրեանց. և ըստ պաշտաման իւրեանց։ 4 (ըստ տանց տոհմից նց։) *Եւ գտան որդիքն եղիազարու յոլովագոյնք յիշխանս զօրաւորացն՝ քան զորդիսն իթամարայ։ և որոշեաց զնս. և զորդիսն եղիազարու կացոյց իշխանս 'ի տանց տոհմիցն, արս վեշտասան։ և զորդիսն իթամարայ ըստ տանց տոհմիցն, արս 5 ութն։ *Եւ զատոյց զնս ըստ վիճակի նոցին. վասն զի էին իշխանք սրբութեանցն. և առաջնորդք 'ի տանն Տն. յորդւոյն եղիազարու. և յորդւոյն 6 իթամարայ։ *Եւ գրեաց զնս սամէաս որդի նաթանայէլի, դպիր 'ի ղևտացւոցն՝ յանդիման (կալ) արքայի և իշխանացն. և սադովկայ քահանայի. և աքիմելէքայ որդւոյ աբիաթարայ։ և իշխանք տոհմից քահանայիցն և ղևտացւոցն 'ի տանէ ազգին իւրեանց. մի մի առ որդիսն եղիազարու։ և մի 7 մի առ որդիսն իթամարայ։ *Եւ ել վիճակն առաջին յարիբայ։ երկրորդն 8 յադիմայ։ *Երրորդն քարեմայ։ չոր9րորդն սէուրիմայ։ *Հինգերորդն 10 մելքեայ։ վեցերորդն մերայ։ *Եօթներորդն ակկուսայ։ ութերորդն ա11բիայ։ *Իններորդն յեսուայ։ տասն12երորդն սեքենիայ։ *Մետասաներորդն եղիաբայ։ երկոտասանե13րորդն սաղակիմայ։ *Երեքտասաներորդն ոփփայ։ չորեքտասաներորդն 14 իզբայիլի։ *Հնգետասաներորդն բեղգայ։ վեշտասաներորդն եմմե15րայ։ *Եօթնուտասաներորդն եզիրայ՝ ութուտասաներորդն ափեսեայ։ 16 *Իննուտասաներորդն փեթիայ. քսան17երորդն եզեկիելի։ *Քսաներորդ առաջներորդն յաքինայ։ քսաներորդ 18 երկրորդն գամուլի։ *Քսաներորդ երրորդն դաղախայ։ քսաներորդ չոր19րորդն մոզիայ։ *Այս է համար նոցա ըստ պաշտամանն իւրեանց մտանել 'ի տունն Տեառն։ ըստ իրաւանց իւրեանց. 'ի ձեռն ահարոնի հօրն իւրեանց.

‖ Ղևտ. 10.1. Թուոց 3.4. 26.61.

եանց․ որպէս պատուիրեաց Տր Ած Իղի ։ 20 *Եւ որդւոյն ղևեայ մնացելոցն որդւոցն ամրամայ․ սուբայէլ․ յադայիայ․ աբադիայ ։ 21 *Յորդւոցն աբիայ՝ իշխանն յեսիաս ։ 22 *Եւ յորդւոց սարիսայ՝ սաղօմոթ ։ Եւ յորդւոցն սաղօմօթայ, յանաթ ։ 23 *Եւ յորդւոյն քեբրօնի յեդիու առաջին ։ ամարիաս երկրորդ ։ յեզիէլ երրորդ ․ յեկմաս չորրորդ ։ 24 * Որդիքն ոզիէլի, միքա առաջին․ և յուսա երկրորդ ։ և որդի միքայի, սամեր ։ 25 *Եւ եղբայր միքայ յեսիէ ։ որդի յեսիայ՝ զաքարիաս ։ 26 *Որդիք մերարեայ․ մոողի և մուսի ։ ոզիա․ որդի նորա՝ բոնիա ։ 27 *Որդի նորա զակքուր․ և ոբդիա ։ 28 *Մոողի․ եղէազար․ և կիս․ որդի նորա ։ 29 *Եւ որդի կիսայ․ իմայէլ ։ 30 *Եւ որդիք մուսեայ մոողի․ և եդեր․ և յերիմօթ ։ այս էին որդիք ղևտացւոյն․ ըստ տանց տոհմիցն իւրեանց ։ 31 *Արկին և նոքա վիճակս․ որպէս և եղբարքն իւրեանց որդիքն ահարօնի․ առաջի Դաւթի թագաւորին ։ և սադովկ․ և աքիմելէքէ՝ յիշխանաց տոհմից քահանայիցն ։ և ղևտացւոյն ցեղք․ որք կային իբրև զեղբարսն իւրեանց զկրտսերագոյնսն (զորս ։)

## ԳԼ ։ ԻԵ ։

1 Կացոյց դաւիթ արքայ՝ և իշխանք զօրուն ՚ի գործն, ընդ որդիսն ասափայ․ և եմանայ․ և իդիթունայ ։ որք երգէին տաւղօքն․ և քնարօքն․ և ծնծղայիւք ։ և եղև թիւ նոցա․ որք գործէին զգործսն իւրեանց ։ 2 *Որդիք ասափայ․ զակքուր․ և յօսէփ․ և նաթանիա․ և յէսիէլ ։ որդիքն ասափայ մօտ առ թագաւորն ։ 3 *Եւ իդիթունայ որդիք․ գոդողիաս․ սուրի․ և յէիմ․ և սեմէի, և ասաբիաս․ և մատաթիաս՝ վեց ։ հանդերձ հարբն իւրեանց իդիթունաւ երգէին քնարօքն զգոհութիւն և զօրհնութիւն Տն ։ 4 *Եւ որդիք եմանայ․ բոկքիաս․ և մաթանիաս․ և ոզիէլ․ և սոբայէլ․ և յերիմութ․ և անանիաս․ և անան․ և եղէաթան․ և գեդողաթի․ և հռեմոթի․ և եզեր․ և սեբանատան․ և մեղաւօթ․ և յօթիրի․ և մազիօվթ ։ 5 *Ամենեքեան սոքա որդիք եմանայ ։ որք նուագէին առաջի արքային բանիւքն Այ՝ բարձրացուցանել եղջերուն ։ և ետ Ած որդիս եմանայ հնգետասան․ և դստերս երիս ։ 6 *Ամենեքեան նոքա հանդերձ հարբն իւրեանց երգէին օրհնութիւնս ՚ի տանն Տն․ ծնծղայիւք․ և տաւղօք․ և քնարօք մերձ առ արքայն ։ և ասափ․ և իդիթուն․



և եմանն ։ 7 *Եւ եղև թիւ նոցա հանդերձ եղբարբքն իւրեանց․ որք ուսեալ էին զերգսն Տն․ ամենեքեան հանճարեղք երկերիւր և ութսուն և ութ ։ 8 *Արկին և նոքա վիճակս․ հանապազորդ պաշտամանն․ ըստ փոքու և մեծի՝ կարելոցն․ և որք ուսանէին ։ 9 *Եւ ել վիճակն առաջին ասափայ, և որդւոց նր և եղբարցն իւրոց ։ յօսէփ առաջին․ գոդողիաս երկրորդ․ ինքն և եղբարքն իւր՝ և որդիք իւր երկոտասան ։ 10 *Երրորդ՝ զակքուր․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 11 *Եւ չորրորդ․ եզրի․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 12 *Հինգերորդ նաթանիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 13 *Վեցերորդ, բոկիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 14 *Եօթներորդ՝ յեսուէլ․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 15 *Ութերորդ՝ իսիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 16 *Իններորդ մաթանիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 17 *Տասներորդ՝ սեմէի․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 18 *Մետասաներորդ՝ եզրիէլ․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 19 *Երկոտասաներորդ՝ ասաբիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 20 *Երեքտասաներորդ․ սուբայէլ․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 21 *Չորեքտասաներորդ, մատաթիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 22 *Հնգետասաներորդ՝ յերիմօթ․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 23 *Վեշտասաներորդ․ անանիաս․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 24 *Եօթնուտասներորդ, եզբակասան․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 25 *Ութուտասներորդ, անանի․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 26 *Իննուտասներորդ, մեղեթի․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 27 *Քսաներորդ, եղիաթ․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 28 *Քսաներորդ առաջնորդ՝ յեթիրի․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 29 *Քսաներորդ երկրորդ, գեդդեղօթի․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 30 *Քսաներորդ երրորդ, մազիովթ․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։ 31 *Քսաներորդ չորրորդ, հռոմեթեզեր․ որդիք իւր՝ և եղբարք իւր երկոտասան ։

## ԳԼ ։ ԻԶ ։

1 Եւ ՚ի զատուցեալսն դրանցն յորդւոցն կորխայ․ մեսողամ որդի կոր

խայ . յորդւոցն Ասափայ : 2 * Եւ Մա-սեղամիայ որդիք՝ Զաքարիա անդրա-նիկ՝ Յադիէլ երկրորդն՝ Աբդիաս եր-րորդ . Նաթանա չորրորդ : 3 * Եւ ով-դամ՝ հինգերորդ : Յօնաթան վեցե-րորդ : Եղիովէն եօթներորդ : 4 * Եւ Ա-բեթդոմայ որդիք : Սամէաս անդրա-նիկ : Եւ յովազաբադ երկրորդ . յովա-դա երրորդ : Սաքար չորրորդ : Նաթա-նայէլ հինգերորդ : 5 * Ամիէլ վեցե-րորդ : Իսաքար եօթներորդ : Փեղաթի ութերորդ : Վասն զի օրհնեաց զնա Տէր : 6 * Եւ Սամէաս որդւոյ նորա անդ-րանկին ծնան որդիք զօրաւորք՝ ի տան հօրն իւրոյ . վասն զի հզօրք էին : 7 * Որդիք Սեմիայայ . Ագոնի . եւ Հռափայէլ . եւ յովբէթ . եւ Եղզաբեդ . Աքիու . եւ Եղ-բարք իւր որդիք զօրաւորք ուժով : Եղիու . եւ Սամաքիաս . ( եւ Իզբակոս : ) 8 * Ամենեքեան սոքա որդիք Աբեդովմ. ինքեանք՝ եւ որդիք իւրեանց՝ եւ եղբարք իւրեանց՝ զօրացեալք զօրութեամբ . գոր-ծել զօրութեամբ զգործ ; վաթսուն եւ երկու յԱբեդոմայ : 9 * Եւ Մեղեմիայ , որդիք եւ եղբարք հասունք՝ ութ եւ տասն : 10 * Եւ յԵսսամայ յորդւոցն Մե-րարեայ որդի մի Շամարի . որում պա-հէին զիշխանութիւն . զի ոչ գոյր անդրանիկն ՚ի միջի . եւ առ եդ զնա հայր իւր ՚ի սկզբան : 11 * Քեղկիա երկ-րորդ . Նաաբէլ երրորդ . Զաքարիա չորրորդ : Ամենեքեան սոքա Ուսայեայ որդիք՝ եւ եղբարք նորա՝ չորեքտասանք : 12 * Սոցա էլ բաժինն վիճակաւ դրանցն գլխաւորութեանց՝ կալ շաբաթաւոր առաջի եղբարցն իւրեանց . եւ պաշտել ՚ի տանն Տեառն : 13 * Եւ արկին վիճակ ըստ փոքուն եւ ըստ մեծին . ըստ տանց աղ-գատոհմին իւրեանց ՚ի դրունս : 14 * Եւ ել վիճակ դրանն արեւելից Սե-մեայ՝ եւ Զաքարիայ որդւոյ նորա : յովաս-խորհրդական ՚ի միտս իւր . արկանէին վիճակս . եւ ել նմա վիճակն ընդ կողմն հիւսիսոյ : 15 * Եւ Աբդեդոմայ ընդ հա-րաւակողմն կոյս : եւ որդւոց իւրոց . ընդդէմ տանն Ասափայ : 16 * Յերրորդ-դեանն՝ Սեմիյն եւ Ովսայ ընդ արեւ-մուտս կոյս . դրամբն հանդերձ որակա-պանին . ելից ճանապարհին . պահ առ պահ ընդ արեւելս : 17 * Իսկ ղեւտացիքն վեց վեց յաւուր ընդ կողմն հիւսի-սոյ : չորս չորս յաւուր ընդ կողմն հա-րաւոյ : չորս չորս յաւուր՝ յասափիմն . եւ երկուս երկուս ՚ի փոխանակել : 18 * Եւ ընդ արեւմուտս չորս : եւ ՚ի ճա-նապարհ երկուս երկուս փոխանակաւ : 19 * Այս վիճակք բաժնից դարապա-նաց որդւոցն Կորխայ՝ եւ որդւոցն Մե-րարեայ : 20 * Եւ ղեւտացիքն եղբարքն իւրեանց հանդերձ ՚ի վերայ գանձին տանն Տեառն . եւ ՚ի վերայ գանձին սրբոցն սր-բոց : 21 * Որդիքն Եղադանայ որդւոյ Գեր-սամայ եւ ՚ի Եղադանայ իշխանք ազգաց տոհմին Եղադանու . եւ Գերսամայ . Յե-հիէլ : 22 * Որդիք Յեհիէլի . Զեթամ . եւ յովէլ՝ եղբարք նորա ՚ի վերայ գանձին տանն Տեառն : 23 * Եւ Ամրիմ . եւ Իսահառ . 24 եւ Քեբրոն . եւ Ոզիէլ : * Եւ Սեբուէլ որդի Գերսամայ որդւոյ Մովսէսի : զօ-րագլուխք ՚ի վերայ գանձուցն : 25 * Եւ եղ-բայր նորա Եղիազար . Աբիա որդի նորա . յուսիէ որդի նորա . յովրամ որդի նորա . Զեքրի որդի նորա . եւ Զելմիթ որդի նորա : 26 * Եւ ինքն Սաղամիթ եւ եղբարք իւր ՚ի վերայ ամենայն գանձուն սրբոցն սրբոց . զոր նուիրեաց Դաւիթ՝ եւ իշխանք տոհ-միցն՝ հազարապետք եւ հարիւրապետք . 27 եւ իշխանք զօրութեանցն : * Զոր առեալ էր ՚ի քաղաքաց անտի աւար , եւ նուի-րեալ էր ՚ի նոցանէն . զի մի նուաղես-ցի գործ շինուածոյ տանն Տեառն : 28 * Զոր նուիրեցին Սամուէլ տեսա-նողն . եւ Սաւուղ կիսեանց . եւ Աբեններ Ներեանց . եւ յովաբ որդի Շարուհեայ . եւ ամենայն նուէրք . որք էին ՚ի ձեռս Սա-29 ղովմեայ եւ եղբարց իւրոց : * Յեսսա-րի . եւ Քանանիա . եւ որդիք իւր . եւ գործք գործոյն արտաքնոյ ՚ի վերայ Իսրայէլի . զի 30 գրիչքն՝ եւ վճարիչքն : * Եւ Քեբրոնայ Սադիաս եւ եղբարք իւր . որդիք զօրու-թեան հազար եւ եօթնհարիւր . եւ ՚ի վերայ տեսչութեան Իսրայէլի յայնկոյս Յորդա-նանու դետոյն ընդ արեւմուտս . յամե-նայն գործ պաշտաման Տեառն . եւ ՚ի գործ ար-31 քունի : * Քեբրոնայ Ուրիաս իշխան , Քեբրոնայ ազգատոհմօքն իւրեանց հանդերձ . յամին քառասներորդի թա-գաւորութեանն Դաւթի . այս յաշխարհ-գրի անդ գտաւ : այր զօրութեան ՚ի նո-32 յազերն Գաղաադիտացւոց : * Եւ եղ-բարք իւր որդիք զօրաւորք . երկու հա-զար եւ եօթնհարիւր . գլխաւորք տոհ-մին : եւ կացոյց զնոսա արքայ Դաւիթ ՚ի վերայ Ռուբինի՝ եւ Գադայ՝ եւ կէս ազգին Մանասեան Գադին . վասն ամենայն բանից Տեառն . եւ բանից արքունի :

## ԳԼ : ԻԷ :

1 Եւ որդիք Իսրայէլի իւրաքանչիւր թուոց նահապետք ազգատոհմին հա-զարաւորք եւ հարիւրաւորք . եւ համա-րակար դպիրք . որք պաշտէին ՚ի ժողո-վրդեանն զամենայն համարս արքունի . ամենայն իւրաքանչիւր գործոյն համարոյ եկին եւ մտին ամսոյ ամսոյ . յամենայն ամ-2 սոյ ընտրութեան : * Առաջին համարոյ առաջ-

առաջնոյ ամսեանն յեզբաաղ. և բաշզէէղ. և ընտրութիւն ելից նորա քսան և չորս հազարք: 3 *Յորդւոցն փարէսայ. որ գլուխ էր ամ իշխանացն զօրաց. և ամսեանն առաջնոյ: 4 *Ընտրութի ամսոյն երկրորդի. դուդայի. և դաքոթի. և միգաղաւովթ առաջնորդք. և ընտրութի նր քսան և չորս հազարք: 5 *Իշխանք զօրութե երրորդի ամսեանն. բանեաս յովադ՝ քահանայ իշխան. և յընտրութե նր քսան և չորս հազարք: 6 *Նքն բանեաս հզօր քան զերեսունսն. և 'ի վերայ երեսնիցն բաժին ընտրութե իւրոյ: 7 *Չամսեանն չորրորդի. ասայէլ եղբայր յովաբու. և զաբդէաս որդի նր. և եղբարք իւր զկնի նորա. և ընտրութիւք բաժնի նր քսան և չորս հազարք: 8 *Հինգերորդ՝ յամսեանն հինգերորդի իշխան սամովթ, յիզիա. և բաժին մասին նորա քսան և չորք հազարք: 9 *Վեցերորդ՝ յամսեանն վեցերորդի իշխան եկեա որդի եկդեայ թեկուեայ. և մասն բաժնի նորա քսան և չորս հազարք: 10 *Եօթներորդ ամսեանն՝ եօթներորդ իշխան. քեղ փաղոնեանց յորդւոյն եփրեմայ. և մասն բաժնի իւրոյ քսան և չորս հազարք: 11 *Ութերորդ՝ յամսեանն ութերորդի. ուսաք եկիեսթայեանց զարայեայ. և մասն բաժնի նր քսան և չորս հազարք: 12 *Իններորդ՝ յամսեանն իններորդի աբիեզեր. որ յանաթօթայն. որ 'ի բենիամին երկրի. և մասն բաժնի իւրոյ քսան և չորս հազարք: 13 *Տասներորդ՝ յամսեանն տասներորդի. մարի նետոփաթեանց զարայ. և մասն բաժնի իւրում. քսան և չորս հազարք: 14 *Եւ մետասաներորդն՝ յամսեանն մետասաներորդի բանախաս 'ի փարաթոնայ. յորդւոյն եփրեմի: և 'ի զաւուցեալն նորա քսան և չորք հազարք: 15 *Եւ երկոտասաներորդն՝ յամսեանն երկոտասաներորդի. քողդայի. նետոփաթայ. որդի գոդոնիէլի: և 'ի զաւուցեալն նր քսան և չորք հազարք: 16 *Եւ 'ի ցեղիցն իէլի. ռուբինի իշխան. եղիեզեր որդի զեքրեայ: և շմաւոնի. սափատեաս. որդի մաաքեայ: 17 *Եւ ղևեայ. ասաբիաս. որդի կամուելի: և ահարոնի՝ սադովկ: 18 *Յուդւոյն յուդայ. եղիաբ. յեղբարցն դաւթի: և իսաքարայ՝ ամարիաս. որդի միքայելի: 19 *Եւ զաբուղոնի. սամէաս՝ որդի աբդիմեայ. և նեփթաղիմայ՝ յարիմութ. որդի ազրիէլի: 20 *Եւ եփրեմի ովսէէ. որդի ոզիայ. և կիսոյ ցեղին մանասէի՝ յովէլ՝ որդի փադդիայ: 21 *Եւ կիսոյ ցեղին մանասէի, որ էր 'ի գաղաադ յադդայի՝ որդի զաքարիայ: յորդւոյն բենիամինի. ասիէլ՝ որդի աբեններեայ: 22 *Եւ դանայ՝ եզրիէլ՝ որդի յովրամայ: սոքա էին նահապետք ցեղիցն իէլի: 23 *Եւ ոչ էառ դաւիթ զթիւ նոցա 'ի քսանամենից և 'ի վայր. զի ասաց Տէր բազմացուցանել զիէլ իբրև զաստեղս երկնից: 24 *‖Եւ յովաբ որդի սարուհեայ սկսաւ թուել զժողովուրդն. և ոչ կատարեաց: և եղև յաղագս այնորիկ բարկութի 'ի վր իէլի. և ոչ յարդեցաւ գիրն 'ի գիրս բանից աւուրց թագաւորին դաւթի: 25 *Եւ 'ի վր գանձուց արքային ազմովթ որդի ադիէլի: և 'ի վերայ գանձուց անդաստանաց 'ի գեօղսն. և 'ի տունս. և յաշտարակս. յովնաթան որդի ոզիայ: 26 *Եւ 'ի վերայ երկրագործացն, որք գործէին. եզրաս որդի քեղուբայ: 27 *Եւ 'ի վր այգեստանացն, սեմեի արիմաթացին. և 'ի վր շտեմարանաց գեղից գինւոյն. զաբդի, որդի սեփինեայ: 28 *Եւ 'ի վր ձիթենեացն և մոլեթզենեացն. որք 'ի դաշտս՝ բաղդանան. որ գեդերօնին: և 'ի վր շտեմարանաց ձիթոյն յովաս: 29 *Եւ 'ի վր արջառոց արօտականաց. որք էին 'ի շողոնին, սովտայ. որդի ադայիայ: 30 *Եւ 'ի վր ուղտուցն ուբիաս իսմայէլացի: և 'ի վր իշոցն յադիաս մարաթօնացի: 31 *Եւ 'ի վր հօտիցն. յովազ ագարացի: ամենեքեան սոքա վերակացուք ստացուածոցն դաւթի արքայի: 32 *Եւ յօնաթան հօրեղբայր դաւթի՝ խորհրդակից. այր հանճարեղ. և ինքն դպրապետ: և յէիէլ որդի աքամենայ ընդ որդիս արքայի: 33 *Եւ աքիտոփէլ խորհրդակից արքայի: և քուսի առաջին բարեկամ արքայի: 34 *Եւ զկնի նորա աքիտոփէլ. մերձ նա: և յովիդայեայ. որդի բանեայ. և աբիաթար: և զօրավար զօրացն արքայի յովաբ:

Margin notes: Բանեաս որդի յոյիելոյ — իշխան իրոց — որդի զաքարեայ — ‖ Վեր. 21.2. — չէին ասէ տօփէլայ եղև յովիադա

## ԳԼ. ԻԸ.

1 Եւ ժողովեաց դաւիթ զամենայն իշխանսն իէլի. զիշխանս դատաւորացն. և զամենայն իշխանս օրամոցն 'ի պաշտօն մնձնապահաց թագաւորին. և զիշխանս հազարաւորացն. և հարիւրաւորացն. և գանձապահացն. և որք էին 'ի վերայ ստացուածոցն, և զզօրաւորսն. և զպատերազմօղս զօրավարացն յերուսաղէմ: 2 *Եւ եկաց դաւիթ արքայ 'ի մէջ եկեղեցւոյն՝ և ասէ. լուարուք ինձ եղբարք իմ, և ժողովուրդք իմ. 'ի սրտի

իմում

խորհուրդ եղև շինել տուն հանգստեան
տապանակի ուխտին Տն̃ . և կայան
ոտից Տն̃ մերոյ . և պատրաստեցի ես
՚ի բնակութիւն այն զկազմածդ զայդ·
( ոսկի . և արծաթ . և պղինձ . և արոյր ·
Բ Թագ· 7· 13· — և երկաթ . և փայտ բազում : ) * Եւ 3
ասաց Ա̃ծ ցիս . ոչ շինեսցես դու ինձ
տուն անուանել զանուն իմ ՚ի վ̃րն̃ր ·
վ̃ն զի այր պատերազմող ես դու . և հե
ղեր արիւն բազում : * Եւ ընտրեաց 4
Տր̃ Ա̃ծ յամ̃ազգաց զինէ . և յամ̃ ինէ
զյուդաս ընտրեաց . կանգնել զթա
գաւորութիւն իւր յաւիտեան : և ՚ի տա
նէն յուդայ զտուն հօր իմոյ ընտրեաց·
և յորդւոց հօր իմոյ կամեցաւ զիս , լի
նել թագաւոր ՚ի վերայ ամենայն իէ̃լի
Ա Մնաց· 9· 7· — * Եւ յամ̃ որդւոց իմոց ( վասն զի որ 5
դիս բազումս ետ ինձ Տր̃ ·) ընտրեաց
զսողոմոն որդի իմ . նստուցանել յա
թոռ թագաւորութեան Տն̃ . ՚ի վերայ
իէ̃լի : * Եւ ասաց ցիս Ա̃ծ . սողոմոն 6
որդի քո շինեսցէ զտունն իմ, և զսրահն
իմ . վասն զի ընտրեցի զնա լինել ինձ
որդի . և ես եղէց նմա ՚ի հայր : * Եւ 7
ուղղեցից զթագաւորութիւն նր̃ մինչև
յաւիտեան . եթէ զօրասցի պահել
զպատուիրանս իմ . և զիրաւունս իմ .
իբրև յաւուրս յայսմիկ : * Եւ արդ՝ 8
դի̃ք առաջի երեսաց ամ̃ եկեղեցւոյս
Տն̃ . և յականջս Ա̃յ մերոյ . պահեցէք՝
և խնդրեցէք զամ̃ պատուիրանս Տն̃
Ա̃յ մերոյ . զի ժառանգիցէք զերկիրս
բարի . և ժառանգեցուցանիցէք որդ
ւոցն ձերոց զկնի ձեր մինչև յաւի_
տեան : * Եւ դու սողոմոն որդի իմ . 9
ծանիր զԱ̃ծ հարցն քոց . և ծառայեա
նմա կատարեալ սրտիւ . և մտօք կա_
Ա Թագ· 16· 7· — մաց քոց . վասն զի զամ̃ սիրտս քննէ
Տր̃ . և զամ̃ խորհուրդս ճանաչէ . եթէ
Սաղմ· 7· 11· — խնդրեսցես զնա , գտցի քեզ . և եթէ
թողցես զնա , լքցէ զքեզ իսպառ :
Երեմ· 11· 20· 17· 10· 20· 12· — * Տես այժմ . զի ընտրեաց զքեզ շի_ 10
նել նմա տուն ՚ի սրբութիւն . և զօրա_
ցի՛ր , և արա՛ : * Եւ ետ դաւիթ սողո 11
մոնի որդւոյ իւրում զօրինակ տաճա
րին՝ և սենեկաց նորա . և գանձարա
նաց նր̃ . և վերնատանցն՝ և շտեմարա
նաց ներքնոց . և տանն քաւութեան :
* Եւ զօրինակ , զոր ունէր ՚ի մտի իւր 12
ում սրահից տանն Տն̃ . և զամ̃ շտեմա
րանացն շուրջանակի . յամբարս տանն
Տն̃ . և մթերից սրբութեացն : * Եւ 13
մնացորդացն յօրամոնից ՚ի պաշտօն քա
հանայիցն . և ղևտացւոցն յամ̃ գործ
պաշտամանց տանն Տն̃ : * Եւ զկշիռ 14
կշռոցն նոցա՝ զոսկւոյ և զարծաթոյ :
* Զկշիռ աշտանակաց ետ նմա . և 15
զճրագամանացն նմանութիւնս : * Եւ ըզ 16
կշիռս սեղանոցն առաջադրութեան . և
զկերակրանչիւր ուրուք ոսկեղէն սեղա
նոց . նոյնպէս և զարծաթեղինացն :
17 * Եւ զմսահանացն . և զնուիրանո_
ցացն . և զտաշտիցն ոսկեղինաց . և
զկշիռս ոսկւոյն և արծաթոյ . և ըզ
18 տփոցն զկերակրանչիւր ուրուք : * Եւ
զսեղանոյ խնկոցն ՚ի մաքուր ոսկւոյ ,
զկշռութիւն եցոյց նմա . և զօրինակ
քերովբէիցն . որոց տարածեալ էր ըզ
թևսն իւրեանց . և հովանի ունէին
՚ի վերայ տապանակի ուխտին Տն̃ :
19 * Զամ̃ գրով ՚ի ձեռանէ Տն̃ ետ դա
ւիթ՝ սողոմոնի . ըստ եղելոյ ՚ի նմա
իմաստութեան . և ըստ օրինակին :
20 * Եւ ասէ դաւիթ ցսողոմոն որդի
իւր . զօրացի՛ր՝ և քա՛ջ լեր . արա՛ և մի՛
երկիցես . և մի՛ զարհուրեսցիս . վ̃ն զի
Տէր Ա̃ծ իմ ընդ քեզ է . ոչ թողցէ
զքեզ . և ոչ լքցէ . մինչև կատարեսցես
զամ̃ գործ սպասու տանն Տն̃ ( և ահա
այդ է օրինակ տաճարին . և սենեկաց
նորա՝ և սրահից նր̃ . և վերնատանցն .
և շտեմարանաց ներքնատանցն . և
տանն քաւութեան . և օրինակ տաճա_
21 րին Տն̃ այդ է : ) * Եւ օրամնից քա_
հանայիցն՝ և ղևտացւոյ . յամ̃ պաշ_
տամունս տանն Ա̃յ . և ընդ քեզ ե_
ղիցի յամ̃ իրս . ամենայն ոք որ յօժա
րեսցի | իմաստութք̃՝ ըստ համօրէն
արուեստից . իշխանքդ . և ամենայն
ժողովուրդ յամ̃ի բանս քո :

## ԳԼ : ԻԹ :

1 Եւ ասէ դաւիթ արքայ ցամ̃ եկե
ղեցին . սողոմոն որդի իմ . զոր
ընտրեաց իւր Տր̃ . մանուկ փո՛քր է . և
գործս մե՛ծ է . վասն զի ոչ մարդոյ է
2 շինուածս , այլ Տն̃ Ա̃յ : * Ըստ ամ̃
զօրութեան իմոյ պատրաստեցի նիւթս
տանն Ա̃յ իմոյ . ոսկի . և արծաթ .
պղինձ . և երկաթ . փայտս . և քարինս
անկեանց . և կամարաց . և քարինս ըն
տիրս . և ականս պատուականս . և այլ
3 պատրաստութիւն բազում : * Եւ ես
վասն հաճոյ լինելոյն իմ ՚ի տան Տն̃
իմոյ : և եղև ինձ զորս նուիրեցից Տն̃ .
ոսկի և արծաթ . և ահաւասիկ ետու
զայդ ՚ի տուն Ա̃յ իմոյ ՚ի բարձրութիւ
բաց յայնցանէ՝ զոր պատրաստեցի ՚ի
4 տուն սրբութեացն : * Երիս հազարս
տաղանդ ոսկի ՚ի սոփերայ . և եօթն
հազար տաղանդ ընտիր արծաթ օծա
5 նել նոքօք զորմս տաճարին : * ՚Ի ձեռն
արուեստաւորաց : և որք յօժարեալ է
մտօք լնուլ զձեռս իւր այսօր Տն̃ :
6 * Եւ յառաջամիտք եղեն իշխանք տոհ
միցն . և իշխանք որդւոցն իէ̃լի . հազա

րա_

րապետք՝ և հարիւրապետք. և վերակացուք գործոյն. և գաւառապետք արքայի : * Եւ ետուն ՚ի գործ տանն 7 Տն. ոսկի՝ տաղանդս հինգ հազար. և բիւր դահեկան. և արծաթ՝ տաղանդս տասն հազար. և պղինձ՝ տաղանդս բիւր և ութն հազար : * Եւ 8 որոց գտաւ քար պատուական. ետուն ՚ի շտեմարանս տանն Տն. ՚ի ձեռն Յեքիելի որդւոյ Եսրոմի : * Եւ 9 զուարճացաւ ժողովուրդն յաղագս յօժարամիտ լինելոյն. վասն զի լի սրտիւ եղեն յօժարամիտք Տն. և Դաւիթ արքայ ուրախ եղև մեծապէս : * Եւ օրհնեաց արքայ Դաւիթ զՏէր 10 առաջի եկեղեցւոյն՝ և ասէ. օրհնեալ է Տր Ած Իղի հօրն մերոյ յաւիտենից մինչև յաւիտեանս : * Քո է Տէր 11 մեծութիւն. և զօրութիւն. և պարծանք. և յաղթութիւն. և կարողութիւն. վն զի դու ամենեցուն՝ որք են յերկինս և ՚ի վերայ երկրի՝ տիրես. յերեսաց քոց դողան ամ թագաւորք՝ և ազգք : * Ի քէն 12 է մեծութիւն և փառք. դու ես ամենեցուն իշխան՝ Տր. և իշխան ամ իշխանութեանց. ՚ի ձեռին քում է զօրութիւն և հզօրութիւն. և ՚ի ձեռին քում ամենակալ մեծութին զօրացուցանել զամ : * Եւ 13 արդ Տր՝ գոհանամք զքէն. և օրհնեմք զանուն պարծանաց քոց : * Ո՛ եմ ես. 14 և ո՛ է ժողովուրդ քո. զի կարացաք յօժարամիտ լինել քեզ յայսմ ամի. վն զի քո է ամ ինչ. և ՚ի քոյոց տուաք քեզ : * Պանդուխտք եմք 15 մեք առաջի քո՝ և նժդեհք. որպէս և ամենայն հարք մեր. ‖ իբրև զստուեր են աւուրք մեր ՚ի վերայ երկրի. և ոչ գոն մեր մնացուածք ինչ : * Տր Ած 16 մեր. ամենայն բազմութիւս այս. զոր պատրաստեցի շինել զտուն անուան սրբութե քոյ. է ՚ի ձեռանէ քումմէ. և քո է ամենայն ինչ : * Եւ ծանեայ 17 Տր՝ եթէ դու ես. որ քննես զսիրտս. զարդարութիւն սիրես. և մեք պարզ սրտիւք յօժարամիտք եղեաք յայսմ ամենայնի. և արդ՝ զժողովուրդս քո. որ գտաւ աստ. տեսի ուրախութբ լի. եղեալ առ քեզ յօժարամիտ :
* Տէր Ած աբրահամու. և իսահակայ. և իսրայելի՝ հարցն մերոց. 18 պահեա զայս ՚ի միտս և ՚ի խորհուրդս ժողովրդեանս քոյ յաւիտեան. և ուղղեա զսիրտ 19 նոցա առ քեզ : * Եւ սողոմոնի որդւոյ իմում տուր սիրտ բարի. առնել զպատուիրանս քո. և զվկայութիս քո. և զհրամանս քո. և ՚ի կատարումն ածել զպատրաստութի տան քոյ :
20 * Եւ ասէ դաւիթ ցամենայն եկեղեցին. օրհնեցէք զՏր Ած ձեր : և օրհնեաց ամենայն եկեղեցին զՏր Ած հարցն իւրեանց. և խոնարհեցուցեալ զծունդս՝ երկիր պագին Տն. և արքայի : 21 * Եւ եզեն դաւիթ Տն զոհս. և մատոյց ողջակէզս Իղ ՚ի վաղիւն առաջնոյ աւուրն. զուարակս հազար. խոյս հազար. գառինս հազար. և զնուէրս նոցա. և զզոհսն յաճախութբ 22 ամենայն Իղի : * Կերին՝ և արբին առաջի Տն յաւուր յայնմ ուրախութբ՝ և թագաւորեցուցին երկրորդ անգամ զսողոմոն որդի դաւթի. ‖ և օծին զնա Տն ՚ի թագաւոր. և զսադովկ ՚ի քահանայութի : 23 * Եւ նստաւ սողոմոն յաթոռ հօր իւրոյ դաւթի. և յաջողեցաւ. և հնազանդեցաւ նմա ամենայն իղ : 24 * Իշխանք զօրաւորք. և ամենայն որդիք արքայի դաւթի հօրն նորա հնազանդեցան նմա : 25 * Եւ մեծացոյց Տր զսողոմոն ՚ի վերուստ առաջի ամ Իղի. և ետ նմա փառս թագաւորութե. որ ոչ ումեք եղև ամենեցուն թագաւորացն. որք յառաջ քան զնա : 26 * Եւ դաւիթ որդի յեսսեայ թագաւորեաց ՚ի վերայ իսրայելի ամս 27 քառասուն : * ‖ Ի քեբրոն ամս եօթն. 28 և յերուսաղէմ ամս երեսուն և երեք : * Եւ վախճանեցաւ բարի ծերութբ. լի աւուրբք. մեծութբ. և փառօք. և թագաւորեաց սողոմոն որդի նորա փո29 խանակ նր : * Եւ մնացեալ բանք արքայի դաւթի առաջինք և վերջինք. գրեալ են ՚ի բանս սամուելի տեսանողի. և ՚ի բանս նաթանայ մարգարէի : և ՚ի բանս գադայ տեսանողի :
30 * Յաղագս ամ թագաւորութե. և հարստութե նորա. և ժամանակք. որք եղեն նորա ՚ի վերայ Իղի. և ՚ի վերայ ամ թագաւորութեց երկրի :

‖Իմաս. 2. 1.

‖3 Թագ 1. 34.

‖3 Թագ 2. 11.



Եւ յաղօթս եկաց Եզեկիաս առ Տ՟ր · և լուաւ նմա, և ետ նմա նշան ։ 2· Մնաց· 32· 24·



Եւ կալան զՄանասէ, և կապեցին զնա կապանօք, և տարան 'ի Բաբելոն ։ 2· Մնաց· 33· 11·

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ ՄՆԱՑՈՐԴԱՑ՝

## ՈՐ ԸՍՏ ԵԲՐԱՅԵՑՒՈՑՆ, ԴԻԲՐԷ ՀԱՅԱՄԻՄ ԱՍԻ ։

Գլուխ Առաջներորդ ։

Յ Թագ 3· 1·

1 ԵՒ ԶՕՐԱՑԱՒ ՍԱղոմոն որդի Դաւթի 'ի թագաւորութեան իւրում. և Տ՟ր Ա՟ծ իւր ը՟ն նմա էր · և մեծացոյց զնա 'ի բարձրութիւն ։ 2 *Եւ ասաց Սաղոմոն ցամ Իսրայէլ· ցհազարապետս · և ցհարիւրապետս · և ցդատաւորս · և ցամ իշխանս տոհմից ։ 3 *Եւ գնաց Սաղոմոն և ամ եկեղեցին ընդ նմա, 'ի բարձաւանդակ գաբաւոնի · ուր էր անդ խորանն վկայութեան Տ՟ն · զոր արար Մովսէս ծառայ Տ՟ն յանապատին ։ 4 *Բայց զտապանակն Տ՟ն եհան Դաւիթ 'ի քաղաքէն կարիաթարիմայ · վասն զի պատրաստեաց նմա խորան Դաւիթ յերուսաղէմ ։ 5 *Եւ զսեղանն պղնձի · զոր արար Բեսելիէլ որդի Ուրիայ · որդւոյ Յովրայ · անդ էր առաջի խորանին Տ՟ն · և խնդրեաց ինքն Սաղոմոն և եկեղեցին ։ 6 *Եւ եհան անդ Սաղոմոն 'ի վ՟ր պղնձի սեղանոյն առաջի Տ՟ն 'ի խորանին · և մատոյց 'ի վերայ նորա ողջակէզս հազար ։ 7 *'Ի գիշերին յայնմիկ երևեցաւ Ա՟ծ Սաղոմոնի · և ասէ ցնա · խնդրեա՛ զինչ տաց քեզ ։ 8 *Եւ ասէ Սաղոմոն ցԱ՟ծ · դու արարեր ընդ Դաւթի հօր իմում ողորմութի՟ն մեծ · և թագաւորեցուցեր զիս փոխանակ նր ։ 9 *Եւ արդ Տէր Ա՟ծ · հաւատարիմ լիցի անուն քո 'ի վերայ Դաւթի հօր իմոյ · վասն զի դու թագաւորեցուցեր զիս 'ի վ՟ր բազում ժողովրդեանս · որ է իբրև զհող երկրի ։ *Եւ

Գ Թագ 38.1.

3 Թագ. 3. 9. Իմաս. 9. 10.

10 *Եւ արդ՝ զիմաստութիւն և զհանճար տացես ինձ. զի ելանիցեմ առաջի ժողովրդեանս քոյ այսորիկ. և մտանիցեմ. վասն զի ո՞ դատեսցէ զժողովուրդս քո զմեծ զայս : 11 *Եւ ասէ Ած ցսողոմոն, փոխանակ զի եղև այդ 'ի սրտի քում. և ոչ խնդրեցեր մեծութիւն ընչից. ո՛չ փառս. և ոչ զանձինս ատելեաց քոց. և աւուրս բազումս ոչ խնդրեցեր. այլ խնդրեցեր քեզ դու զիմաստութիւն և զհանճար. զի դատեսցես զժողովուրդ իմ. յորոց վ[ե]ր թագաւորեցուցի զքեզ: 12 *Զիմաստութիւն և զհանճար տամ՝ քեզ. և զմեծութիւն, և զինչս՝ և զփառս տաց քեզ. որպէս զի ոչ եղև նման քեզ. 'ի թագաւորս յառաջագոյն քան զքեզ. և զկնի քո ո՛չ լիցի այդպէս : 13 *Եւ եկն սողոմոն 'ի բամիայ գաբաւոնի յեհէմ. յերեսաց խորանին վկայութեան. և թագաւորեաց 'ի վերայ իէլի :

3 Թագ. 10. 26.

14 *Եւ ժողովեաց սողոմոն կառս և հեծեալս. և եղեն նմա հազար և չորեքհարիւր կառք. և երկոտասան հազար հեծելոյ. և եթող զնոսա 'ի քաղաքս հեծելոյն. և զօրն էր ընդ արքային յերուսաղէմ: 15 *Եւ ետ արքայ զոսկի և զարծաթ իբրև զքարինս յերուսաղէմ. և զմայրս 'ի հրեաստանի, իբրև զմոլէթզենիս 'ի դաշտի բազմութեան :

3 Թագ. 10. 27.

16 *Եւ ելք ձիոյ սողոմոնի, յեգիպտոսէ. և գինք վաճառուց արքային : 17 *Ելանէին. և ելանէին. և ածէին յեգիպտոսէ. կառս մի վեց հարիւր արծաթոյ. և ձի հարիւր և յիսուն. և այնպէս ամենայն թագաւորացն քետացւոց. և թագաւորացն ասորեաց 'ի ձեռս նոցա բերէին:

## Գլ: Բ.

1 Եւ ասաց սողոմոն շինել զտուն անուան Տն. և զտուն թագաւորութեան իւրոյ : 2 *Եւ ժողովեաց սողոմոն եօթանասուն հազար արանց բեռնակրաց. և ութսուն հազար քարահատաց 'ի լերինս. և վերակացուք նոցա երեքհազարք և վեցհարիւր :

3 Թագ. 5. 2.

3 *Եւ առաքեաց սողոմոն առ քիրամ արքայ տիւրոսի՝ և ասէ. ո՛րպ արարեր ը՟ հօրն իմում դաւթի. և ետուր նմա մայրս փայտս. շինել իւր տուն բնակելոյ 'ի նմա : 4 *Եւ արդ՝ ահա ես որդի նորա. շինել տուն անուան Տն Այ իմոյ. սրբել զնա նմա. ծխել առաջի նորա խունկս. և առաջադրութիւս յա՟մ ժամ. և մատուցանել ողջակէզս հանապազ. առաւօտուց և երեկորին. և 'ի շաբաթս. և յամսամուտս. և 'ի տօնս Տն

խթ

Այ մերոյ յաւիտեան՝ զայս յինէն : 5 *Եւ տունս՝ զոր ես շինեմ, մեծ է. վ[ասն] զի մեծ է Ած մեր քան զա՟մ Ածս: 6 *Եւ ո՛ կարասցէ շինել նմա տուն. զի եթէ երկինք՝ և երկինք երկնից ոչ տանին զփառս նորա. և զի՞նչ ես շինեցից նմա տուն. այլ զի ծխեսցեն խունկս առաջի նորա : 7 *Եւ արդ՝ առաքեա ինձ այր իմաստուն. որ գիտիցէ գործել զոսկի և զարծաթ և զպղինձ. և զերկաթ. զծիրանի. և զկապուտակն. և զբեհեզ. և որ գիտիցէ քանդակել զքանդակս ընդ իմաստունսն իմ. որք են 'ի հրէաստանի և յերուսաղէմ. զորս պատրաստեաց դաւիթ հայր իմ: 8 *Եւ տո՛ւր բերել ինձ փայտս մայրս. և սարոյս. և թեղօշս 'ի լիբանանէ. վասն զի ես գիտեմ. իբրև զծառայս քո ոչ ոք գիտէ հատանել զփայտ 'ի լիբանանէ. և արդ ծառայք քո երթիցեն ընդ ծառայս իմ: 9 *Պատրաստել ինձ փայտ բազում. վասն զի տունս, զոր ես շինեմ. է մեծ փառաւոր: 10 *Եւ գործունէից՝ որք հատանեն զփայտն՝ 'ի կերակուր ետու հաց. ուտելիք ծառայիցն քոց՝ քանհազար քոռ ցորենոյ. և քանհազար քոռ գարւոյ. և գինի քանհազար չափ. և ձէթ քանհազար չափ : 11 *Եւ ասաց քիրամ արքայ տիւրոսի գրով. և արձակեաց առ սողոմոն. վասն սիրելոյ Տն զժողովուրդ իւր՝ ետ զքեզ 'ի վ[ե]ր դոցա թագաւոր : 12 *Եւ ասէ քիրամ. օրհնեալ է Տր Ած իէլի՝ որ արար զերկինս և զերկիր. որ ետ դաւթի արքային որդի իմաստուն. գիտել զհանճար՝ և զիմաստութիւն. որ շինեսցէ զտուն Տն. և զտուն թագաւորութեան իւրոյ : 13 *Եւ արդ՝ ահա առաքեցի քեզ այր իմաստուն. և որ գիտէ զհանճար՝ զքիրամ զծառայ իմ: 14 *Մայր դորա է 'ի դստերացն դանայ. և հայր դորա այր տիւրացի. գիտէ գործել զոսկի. և զարծաթ. և զպղինձ. և զերկաթ. և զքարինս. և զփայտս. և անկանել զծիրանին. և զկապուտակն. և զբեհեզն. և զկարմիրն. և քանդակել քանդակս. և իմանալ զա՟մ հնարս՝ զորս տացես դմա. ընդ իմաստունսն քո՝ և ը՟ իմաստունս դաւթի տեառն իմոյ հօր քոյ: 15 *Եւ արդ՝ զցորեանն՝ և զգարին, և զձէթն՝ և զգինին. զոր ասաց տէր իմ: 16 տացէ ծառայից իւրոց: *Եւ մեք հատանեմք զփայտ 'ի լիբանանէ ըստ ա՟մ պիտոյից քոց. և ածցուք զնա ը՟ ծով լաստս 'ի յոպպէ. և հաւաքեսցես զայն յերուսաղէմ: 17 *Եւ ժողովեաց սողոմոն զա՟մ արս պանդուխտս յերուսա

Հոր պատուիրեաց Տր Եւբայեցւ

ղէմ. զկնի թուոյն՝ զոր թուեաց զնս̅ Դաւիթ հայր նր̅. և գտան հարիւր և յիսուն հազար. և երեք հազարք և վեց հարիւր: 18 * Եւ արար 'ի նոցանէ եօթանասուն հազար բեռնակրաց. և ութսուն հազար քարահատաց. և զերիս հազարսն և զվեց հարիւրսն գործավարս 'ի վերայ նոցա:

## ԳԼ: Գ:

3 Թագ. 6. 1. 2 Թագ. 24. 18. 1. Մն̅ա. 21. 18. և 26.

1 Եւ սկսաւ Սողոմոն շինել զտունն Տն̅ յԵրուսաղէմ՝ 'ի լերինն ամուրհացւոյ՝ ուր երևեցաւ Տէր Դաւթի հօրն նորա. 'ի տեղւոջն յորում պատրաստեաց Դաւիթ. ‖ 'ի կալն Ոռնայ յեբուսացւոյ: 2 * Եւ սկսաւ շինել յամսեանն երկրորդի, յամին չորրորդի թագաւորութեանն իւրոյ: 3 * Եւ սկսաւ Սողոմոն շինել զտունն Այ̅. երկայնութի̅ չափու առաջնոյն 'ի վաթսուն կանգնոյ՝ և լայնութիւն 'ի քսան կանգնոյ: 4 * Եւ եդամ դէմ յանդիման տանն. երկայնութի̅ն առաջին՝ և լայնութի̅ տանն կանգնոյ քսանից. և բարձրութի̅ հարիւր և քսան կանգնոյ. և պատեաց զնա ոսկւով սրբով 'ի ներքուստ: 5 * Եւ զտունն մեծ դրուագեաց մայր փայտիւք. և պատեաց ոսկւով սրբով՝ և քանդակեաց 'ի նմա արմաւենիս. և շղթայագործս: 6 * Եւ զարդարեաց զտունն ականմբք պատուականօք 'ի փառս. և ոսկւով սրբով 'ի սեփարուհիմայ: 7 * Եւ պատեաց ըզտունն ոսկւով. և զորմսն՝ և զդրունսն՝ և զձեղունսն՝ և զդուրս. և քանդակեաց քերոբէս յորմսն: 8 * Եւ արար զտուն սրբութե̅ սրբութեցն. զերկայնութի̅ նր̅ առաջի կողմանէ 'ի քսան կանգնոց. և զլայնութի̅ն 'ի քսան կանգնոց. և պատեաց զնա մաքուր ոսկւով 'ի քերոբէս վեցհարիւր տաղանդով: 9 * Եւ կշիռ բևեռացն միոյ միոյ կշռութի̅ յիսուն սիկղ ոսկւոյ. և զվերնատունն պատեաց ոսկւով: 10 * Եւ 'ի տան սրբութե̅ սրբութեցն քերոբէս երկուս (գործ). և պատեաց զնս̅ ոսկւով: 11 * Եւ թևք քերոբէիցն երկայնութի̅ քսան կանգնոյ. և թև մի 'ի հինգ կանգնոյ՝ կցեալ յորմն տանն. և թևն միւս 'ի հինգ կանգնոյ՝ կցեալ 'ի թևս քերոբէին միւսոյ: 12 * Եւ թևն քերոբէին միւսոյ 'ի հինգ կանգնոյ կցեալ յորմ տանն. և միւս թևն 'ի հինգ կանգնոյ կցեալ 'ի թև քերոբէին միւսոյ: 13 * Եւ թևք քերոբէիցն տարածեալք 'ի քսան կանգնոյ. և ինքեանք կային 'ի վր̅ ոտից իւրեանց. և դէմք նոցա 'ի տունն: 14 * ‖ Եւ արար զվարագոյրն 'ի կապուտակէ՝ և 'ի ծիրանւոյ՝ և 'ի կարմրոյ՝ և 'ի բեհեզոյ. և անկանէր 'ի նմա քերոբէս: 15 * Եւ արար առաջի տանն սիւնս երկուս. յերեսուն և 'ի հինգ կանգնոյ բարձրութի̅. ‖ և զխոյակս նր̅ 'ի հինգ կանգնոյ: 16 * Եւ արար վանդակապատ 'ի դաբիրայն. և եդ 'ի վերայ գլխոյ սեանցն. և արար նռնաձևս հարիւր. և եդ 'ի վերայ շղթայագործացն: 17 և կանգնեաց ըզսիւնսն առաջի տաճարին. զմին յաջմէ. և զմիւսն յահեկէ. և կոչեաց զանուն այնորիկ. որ յաջմէ էր՝ ուղղութի̅. և զանուն այնորիկ՝ որ 'ի ձախմէն էր՝ զօրութի̅:

Մատ. 27. 51.

Երեմ. 52. 22.

## ԳԼ: Դ:

1 Եւ արար զսեղան պղնձի. 'ի քսան կանգնոյ զերկայնութիւն. և 'ի քսան կանգնոյ զլայնութի̅. և զբարձրութի̅ 'ի տասն կանգնոյ: 2 * ‖ Եւ արար զծովն հալածոյ 'ի տասն կանգնոյ զչափն բոլորակ շուրջանակի. և 'ի հինգ կանգնոյ զբարձրութիւն. և շուրջանակի յերեսուն կանգնոյ: 3 * Եւ նմանութի̅ եզանց 'ի ներքոյ նր̅. որք շուրջ կային՝ 'ի տասն կանգնոյ շուրջպատեալք զնովաւ. և ձուլեալ զզուհարակն, ը̅ն ձուլածոյն իւրեանց: 4 * Որպէս արարին զնոսա երկոտասան զուարակս. երեքն հայէին 'ի հիւսիս. և երեքն հայէին յարևմուտս. և երեքն հայէին 'ի հարաւ. և երեքն հայէին յարևելս. և ծովն 'ի վր̅ նց̅. և յետոյքն իւրեանց 'ի ներքոյ: 5 * Եւ թանձրութի̅ ծովուն թզաւ. և շուրթն նորա իբրև զշուրթն բաժակի քանդակեալ բոյս շուշանի. և տանէր երիս հազարս չափ: 6 * Եւ կատարեաց զնա. և արար աւազանս տասն. և եդ զհինգն յաջմէ. և զհինգն 'ի ձախմէ. լուանալ 'ի նոսա զգործ ողջակիզացն. և ողողել 'ի նմ̅. և ծովն առ 'ի լուանալ 'ի նմա քահանայից զինքեանս: 7 * Եւ արար զաշտանակսն ոսկիս տասն. ըստ յօրինուածոյն իւրեանց. և եդ զնոսա 'ի տաճարին. զհինգն յաջմէ. և զհինգն 'ի ձախմէ: 8 * Եւ արար սեղանս տասն. և եդ 'ի տաճարին. հինգն յաջմէ. և հինգն 'ի ձախմէ: և արար տաշտս ոսկիս հարիւր: 9 * Եւ արար զսրահն քահանայից. և զսրահն զմեծ. և դրունս սրահին. և զդրունս նոցա պատեաց պղնձով: 10 * Եւ զծովն եդ յանկեան տաճարին յաջմէ կողմանէ իբրև յարևելս առաջի: 11 * Եւ արար Քիրամ զմսահանսն. և զկաթսայս. և զկասկարայս սեղանոյն. և զամ̅

3 Թագ. 7. 23.

զկահն

զկաթսն նորա . եւ կատարեաց քիրամ առնել զամենայն գործն . զոր հրամայեաց արքայ սաղոմոն ՚ի տանն ԱՅ : 12 * Սիւնսն երկուս . եւ ՚ի վերայ նց զխոյակսն . եւ ՚ի վր խոյակաց սեանցն զքուլթարօթսն զերկոսեան . եւ զվանդակագործսն զերկուս՝ առ ՚ի ծածկել զխոյակս քուլթարովթացն . որք էին ՚ի վերայ գլխոց սեանցն : 13 * Եւ զանգակս ոսկեղէնս չորեքհարիւր , յերկոսեան վանդակապատսն . եւ զերկուս ազգս նռնաձեւացն ՚ի միում վանդակագործին . ծածկել զերկոսեան զխոյակս . որք էին ՚ի վր սեանցն: 14 * Եւ զմեքենովթսն արար տասն . եւ զաւազանսն ՚ի վերայ մեքենովթացն: 15 * Եւ զծովն զմի . եւ զուարակս երկոտասանս ՚ի ներքոյ նր : 16 * Եւ զկասկարայս . եւ զբառնալիսն . եւ զամանսն . եւ զմսահանսն . եւ զամ կահն նոցա . զոր արար քիրամ . եւ տարաւ արքային սաղոմոնի ՚ի տունն Տն . ՚ի մաքուր պղնձոյ : 17 * Յընդարձակութե երկրին յորդանանու ձուլեաց զայն արքայ ՚ի թանձրութե հողոյն ՚ի տանն սոքովթայ . եւ ՚ի մէջ սադաթայ : 18 * Եւ արար սաղոմոն զամ սպասն զայն զբազում յոյժ . վասն զի ոչ պակասեցաւ կշիռ պղնձոյն : 19 * Եւ արար սաղոմոն զամ սպաս տանն Տն . եւ զսեղանն ոսկի . եւ զայլ սեղանսն . եւ ՚ի վերայ նոցա զհացն առաջաւորութե : 20 * Եւ զաշտանակսն՝ եւ զճրագունսն լուսոյ ըստ յօրինուածոյն յանդիման դաբիրային ՚ի մաքուր ոսկւոյ : 21 * Եւ ճրագարանս իւրեանց . եւ բազմակալս իւրեանց : 22 * Եւ տաշտքն . եւ խնկամանքն . եւ բուրվառքն ՚ի մաքուր ոսկւոյ . եւ դուրք տանն ներքնոյ ՚ի սրբութիւն սրբութեցն : եւ զդրունս տաճարին՝ ոսկեղէնս :

՚ի մէջ առ [illegible]

## Գլ : Ե :

‖3 Թագ 7.51. և 8. 1.

1 Եւ ‖ կատարեցաւ ամ գործն . զոր արար սաղոմոն ՚ի տանն Տն : եւ տարաւ ՚ի ներքս սաղոմոն զսրբութիւնս դաւթի հօր իւրոյ . զարծաթն . եւ զոսկին . եւ զսպասսն . եւ ետ ՚ի գանձս տանն Տն : 2 * Յայնժամ եկեղեցացոյց սաղոմոն զծերսն իէլի . եւ զամ իշխանս ցեղիցն . զառաջնորդս տոհմից որդւոցն իէլի յեէմ . հանել զտապանակ ուխտին ՚ի քաղաքէն դաւթի . նա է սիոն : 3 * Եւ ժողովեցաւ առ արքայ ամ այր իէլի ՚ի տօնին . այն է ամիսն եօթներորդ : 4 * Եւ եկին ամենեքեան ծերքն իէլի . եւ առին ամենեքեան ղեւտացիքն զտապանակն . եւ հանին զնա : 5 * Եւ զխորանն վկայութե . եւ զամ սպասսն նր . որ էր ՚ի խորանին . եւ հանին զայն քահանայքն եւ ղեւտացիք : 6 * Եւ արքայ սաղոմոն՝ եւ ամ ժողովուրդն իէլ եւ երկիւղածքն՝ եւ ժողովեալքն նոցա առաջի տապանակին զենունին զուարակս՝ եւ ոչխարս . որոց ոչ գոյր թիւ . եւ ոչ համար ՚ի բազմութենէն : 7 * Եւ տարան ՚ի ներքս ղեւտացիքն զտապանակ ուխտին Տն ՚ի տեղին իւր ՚ի դաբիր տանն . ՚ի սրբութիւս սրբութեցն . ՚ի ներքոյ թեւոց քերովբէիցն : 8 * Եւ էր քերովբէիցն թռուցեալ զթեւս իւրեանց ՚ի վերայ տապանակին . եւ ծածկէին քերովբէքն զտապանակն . եւ զբառնալիս նորա ՚ի վերուստ : 9 * Եւ շուրջ ունէին բառնալիքն : եւ հայէին գլուխք բառնալեացն ՚ի սրբութեցն ՚ի դէմս դաբիրային . եւ ոչ երեւէին արտաքս : եւ էին անդ մինչեւ ցայսօր : 10 * Եւ ոչ ինչ էր ՚ի տապանակին . բայց երկու տախտակքն . զորս եդ անդ մովսէս ՚ի քորեբ . զորս ուխտեաց Տր ընդ որդիսն իէլի յելանել նոցա յերկրէն եգիպտոսի : 11 * Եւ եղեւ՝ իբրեւ ելին քահանայք ՚ի սրբութեցն . վասն զի ամենեքեան քահանայքն, որք գտան անդ՝ սրբեցան : եւ ոչ էին կարգեալ օրըստօրէ պաշտօնեայքն: 12 * Եւ ղեւտացիքն սաղմոսանուագք . ամենեքեան յորդւոյն ասափայ . եւ եմանայ . եւ իդիթումայ . եւ յորդւոցն նոցա . եւ յեղբարցն նց . որք զգեցեալ էին պատմուճանս բեհեզեղէնս : եւ տաւղօք՝ եւ քնարօք . եւ սրնգօք , կային յարեւելից կողմանէ սեղանոյն : եւ ընդ նոսա քահանայք հարիւր եւ քսան՝ հարկանէին փողս : 13 * Եւ եղեւ միանգամայն ձայն ՚ի հարկանել զփողսն . եւ յերգել զսաղմոսն . եւ ամբառնալ զձայնսն միաբան ասելով : խոստովան եղերուք՝ եւ օրհնեցէք զՏր : եւ բարձրացուցին զձայնսն փողովք եւ ծնծղայիւք . եւ գործեօք երգոյն : եւ ասացին խոստովան եղերուք Տն . զի բարի է . զի յաւիտեան է ողորմ նորա : եւ տունն լցաւ ամպով փառացն Տն : 14 * Եւ ոչ կարէին քահանայքն կալ ՚ի պաշտամանն յերեսաց ամպոյն . վն զի լցին փառքն Տն զտունն ԱՅ :

պարածեէլ

## Գլ : Զ :

‖3 Թագ 8.12.

1 Յայնժամ խօսեցաւ սաղոմոն : ‖ Տր ասաց բնակել ՚ի մառախղի : 2 * Եւ ես շինեցի տուն անուան քում զսրբութիւս քո . եւ պատրաստեցի բնակել ՚ի սմա յաւիտեան : 3 * Եւ դարձոյց արքայ զերեսս իւր . օրհնեաց զամ եկեղեցին իէլի : եւ ամ եկեղեցին իէլի

կայր շուրջ. և ասէ: 4 *Օրհնեալ է Տ՟ր Ա՟Ծ Ի՟Ղի. որ խօսեցաւ բերանով իւրով ընդ Դաւթի հօր իմում. և ձեռօք իւրովք ելից: 5 *Եւ ասէ. յօրէ յորմէ հանի զժողովուրդ իմ յերկրէն Եգիպտոսի. ոչ ընտրեցի քաղաք մի յա՟մ ցեղիցն Ի՟Ղի շինել ինձ տուն՝ զի լինիցի անուն իմ անդ. և ոչ ընտրեցի զայր ոք լինել առաջնորդ 'ի վերայ ժողովրդեան իմոյ Ի՟Ղի: 6 *Եւ արդ ընտրեցի զԵ՟մ լինել անուան իմոյ անդ. և ընտրեցի զԴաւիթ. զի լինիցի 'ի վերայ ժողովրդեան իմոյ Ի՟Ղի: 7 *Եւ եղև 'ի սրտի Դաւթի հօր իմոյ շինել տուն անուան Տ՟ն Ա՟Յ Ի՟Ղի: 8 *Եւ ասաց Տ՟ր ցԴաւիթ ցհայր իմ: Վասն զի եղև 'ի սրտի քում շինել տուն անուան իմոյ. բարւոք արարեր, զի եղև այդ 'ի սրտի քում: 9 *Բայց սակայն դու ոչ շինեսցես ինձ տուն. այլ որդի քո. որ ելցէ յորովայնէ քումմէ՝ նա շինեսցէ տուն անուան իմոյ: 10 *Եւ կանգնեաց Տէր զբանն իւր. զոր խօսեցաւ. և եղէ ես փոխանակ Դաւթի հօր իմոյ. նստայ յաթոռն Ի՟Ղի. ո՟պ խօսեցաւ Տ՟ր. և շինեցի զտունս զայս անուան Տ՟ն Ա՟Յ Ի՟Ղի: 11 *Եւ եդի աստ զտապանակ ուխտին Տ՟ն. զոր ուխտեաց ընդ որդիսն Ի՟Ղի: 12 *Եւ եկաց յանդիման սեղանոյն Տ՟ն առաջի ա՟մ եկեղեցւոյն Ի՟Ղի. և ամբարձ զձեռս իւր: 13 *Զի արար Սողոմոն խարիսխ պղնձի. և եդ զնա 'ի մէջ սրահի տաճարին. 'ի հինգ կանգնոյ զերկայնութիւն նորա. և 'ի հինգ կանգնոյ զլայնութիւն. և յերից կանգնոց զբարձրութիւն նորա: և եկաց 'ի վերայ նր՟. անկաւ 'ի վ՟ր ծնգաց իւրոց առաջի ա՟մ եկեղեցւոյն Ի՟Ղի. ամբարձ զձեռս իւր յերկինս: 14 *Եւ ասէ: ‖Տ՟ր Ա՟Ծ Ի՟Ղի. ոչ ոք է նման քեզ Ա՟Ծ յերկինս. և ոչ 'ի վ՟ր երկրի: որ պահես զուխտ և զողորմութիւն ամենեցուն. որք գնան առաջի քո ա՟մ սրտիւք իւրեանց: 15 *Զի պահեցեր ծառայի քում Դաւթի հօր իմոյ. զոր խօսեցար ընդ նմա՝ և ասացեր. խօսեցար բերանով քով. և ձեռօք քովք լցեր այսօր: 16 *Եւ արդ Տ՟ր Ա՟Ծ Ի՟Ղի՝ պահեա ծառայի քում Դաւթի հօր իմում. զոր ինչ խօսեցար ընդ նմա՝ և ասացեր. ոչ պակասեսցի քո այր յերեսաց իմոց. որ նստցի յաթոռն Ի՟Ղի: բայց միայն եթէ պահեսցեն որդիք քո զճանապարհս իւրեանց գնալ առաջի իմ. ո՟պ գնացեր դու առաջի իմ: 17 *Եւ արդ Տ՟ր Ա՟Ծ Ի՟Ղի. հաւատարիմ լիցի բանն քո Դաւթի: 18 *Եթէ ստուգութեամբ բնակիցի Ա՟Ծ ընդ մարդկան 'ի վերայ երկրի: զի եթէ երկինք՝ և երկինք երկնից ոչ են բաւական քեզ. և զինչ է տունս այս. զոր շինեցի: 19 *Եւ արդ հայեցիս յաղօթս ծառայի քոյ. և 'ի խնդրուածս իմ Տ՟ր Ա՟Ծ. լսել զաղաչանս և զաղօթս. զոր ծառայ քո աղաչէ առաջի քո այսօր: 20 *Լինել բաց աչաց քոց 'ի վ՟ր տանս այսմ. 'ի տուէ և 'ի գիշերի. 'ի տեղւոջս յորում ասացեր կոչել զանուն քո 'ի սմա. առ 'ի լսել զաղօթս. զոր ծառայ քո աղաչէ 'ի տեղւոջս յայսմ: 21 *Եւ լուիցես ըզ խնդրուածս ծառայի քոյ. և ժողովրդեան քոյ Իսրայէլի. զորինչ աղաչեսցեն 'ի տեղւոջս յայսմ. և դու լուիցես 'ի տեղւոջէ բնակութեան քոյ երկնից: լուիցես՝ և քաւիչ լիցիս: 22 *Որինչ մեղանչիցէ այր ընկերի իւրում. և առնուցու նզովս յաղագս այնորիկ նզովել զնա: և եկեսցէ՝ կացցէ առաջի սեղանոյս 'ի տանս յայսմիկ: 23 *Եւ դու լուիցես յերկնից. և արասցես. և դատեսցես զծառայս քո՝ հատուցանելով անօրինին. տալ ըստ ճանապարհաց նորա 'ի գլուխս նորա: և արդարացուցանել զարդարն: և տալ իւրաքանչիւրումեք ըստ արդարութեան իւրում: 24 *Եւ եթէ վանեսցի ժողովուրդ քո Իսրայէլ առաջի թշնամեաց. եթէ մեղիցեն քեզ. և դարձցին. և խոստովան լիցին անուան քում. և յաղօթս կացցեն. և պաղատեսցին առաջի քո 'ի տանս յայսմ: 25 *Եւ դու լուիցես յերկնից. և քաւիչ լիցիս մեղաց ժողովրդեան քոյ Ի՟Ղի: և դարձուսցես զնոսա յերկիրն. զոր ետուր նոցա՝ և հարցն նոցա: 26 *Յարգելուլ քո զերկինս՝ ոչ լինել անձրև, եթէ մեղիցեն քեզ: և յաղօթս կայցեն 'ի տեղւոջս յայսմ. և օրհնեսցեն զանուն քո. և 'ի մեղաց իւրեանց դարձցին. վ՟ն զի նկուն արասցես զն՟ս: 27 *Եւ դու լուիցես յերկնից. և քաւիչ լիցիս մեղաց ծառայից քոց՝ և ժողովրդեան քոյ Ի՟Ղի: վ՟ն զի յայտնեսցես ն՟ց զճանապարհն բարի. յոր գնասցեն 'ի նմա: և տացես անձրև 'ի վերայ երկրի քոյ. զոր ետուր ժողովրդեան քում 'ի ժառանգութիւն:

28 *‖Սով եթէ լինիցի 'ի վ՟ր երկրի: մահ եթէ լինիցի. խորշակահարութի. և դալուկն՝ և մարախ՝ և ջորեակ եթէ լինիցի: եթէ նեղիցէ զն՟ս թշնամի յանդիման քաղաքացն իւրեանց: ըստ ա՟մ հարուածոց. և ըստ ամենայն ցաւոց: 29 *Ամենայն աղօթք՝ և ա՟մ պաղատանք. որք լինիցին ա՟մ մարդոյ. և ա՟մ ժողովրդեան քոյ Ի՟Ղի: եթէ ճանիցէ մարդ զհարուածս իւր. և զախտն իւր.

‖2. Մակ. 2. 8.

‖Մ... 20. 9.

իւր. և ամբարձցէ զձեռս իւր 'ի տանս յայսմ։ * 30 Եւ դու լուիցես յերկնից 'ի պատրաստ բնակութենէ քումմէ. և բժշկեսցես. և տացես առն ըստ սրտի իւրում. որպէս և ճանիցես զսիրտն նր. վասն զի դու միայն ճանաչես զսիրտս որդւոց մարդկան։ * 31 Որպէս զի երկիցեն 'ի ճանապարհաց քոց զամ աւուրս. զորս կեցցեն նոքա 'ի վր երեսաց երկրին. զոր ետուր հարցն նց։ * 32 Եւ ամ օտարականն. որ ոչ է 'ի ժողովրդենէ քումմէ յիլէ. և եկեսցէ յերկրէ հեռաստանէ՝ վն անուան քոյ մեծի. և հզօր ձեռին քոյ. և բարձր բազկի քոյ. եկեսցեն՝ և յաղօթս կացցեն 'ի տեղւոջս յայսմ։ * 33 Եւ լուիցես յերկնից 'ի պատրաստ բնակութենէ քումմէ. և արասցես ըստ ամի. զոր ինչ և կարդասցէ առ քեզ օտարականն. զի ճանիցեն ամ ժողովուրդք երկրի զանուն քո. և երկիցեն 'ի քէն՝ որպէս և ժողովուրդ քո իէլ. և գիտասցեն. եթէ կոչեցեալ է անուն քո 'ի վերայ տանս այսորիկ. զոր շինեցի։ * 34 Եթէ ելցէ ժողովուրդ քո 'ի պատերազմ 'ի վր թշնամեաց իւրոց 'ի ճանապարհ. յոր առաքեսցես զնոսա. և յաղօթս կացցեն առ քեզ 'ի ճանապարհի քաղաքիս այսորիկ. զոր ընտրեցեր դու. և տանս, զոր շինեցի անուան քում։ * 35 Եւ լուիցես յերկնից պաղատանաց նոցա՝ և աղօթից նոցա. և արասցես իրաւունս նոցա։ * 36 Վասն զի մեղանչեն քեզ. ‖քանզի ոչ գոյ մարդ. որ ոչ մեղանչէ. և հարցես զնս. և մատնեսցես զնս առաջի երեսաց թշնամեաց. և գերելով գերեսցին յերկիրն թշնամեաց. յերկիր հեռաւոր՝ կամ մօտաւոր։ * 37 Եւ դարձցին սրտիւք իւրեանց յերկրին. յոր փոխեցան անդր. դարձցին, և աղաչեսցեն զքեզ 'ի գերութեան իւրեանց՝ և ասասցեն. մեղաք՝ և անօրինեցաք։ * 38 Եւ դարձցին առ քեզ յամ սրտից իւրեանց. և 'ի բոլոր անձնէ իւրեանց յերկրի գերութեան. և յաղօթս կացցեն 'ի ճանապարհ երկրիս այսորիկ. զոր ետուր հարցն նոցա. և քաղաքիս, զոր ընտրեցեր. և տանս, զոր շինեցի անուան քում։ * 39 Եւ լուիցես յերկնից 'ի պատրաստ բնակութենէ քումմէ աղօթից նոցա՝ և պաղատանաց իւրեանց. և արասցես իրաւունս. և քաւիչ լիցիս ժողովրդեան քոյ մեղուցելոյ քեզ։ * 40 Եւ արդ Տր՝ եղիցին աչք քո բաց՝ և ականջք քո, առ 'ի լսել զպաղատանս 'ի տեղւոջս յայսմ։ * 41 ‖Եւ արդ՝ արի Տր Ած 'ի հանգիստ քո. դու՝ և տապանակ սրբութեան քոյ։

‖3 Թագ. 8.46. Ժողով. 7.21. 1 Յովհ. 1. 8.

‖Սաղմ. 131.8.

քահանայք քո՝ Տր Ած զգեցցին զփրկութիւն. և որդիք քո ուրախ եղիցին 'ի բարութիւնս։ * 42 Տր Ած մի դարձուցաներ զերեսս քո յօծելոյ քումմէ։ յիշեա զողորմութիւնս քո զԴաւթի ծառայի քո։

## Գլ: Է։

1 Եւ ‖իբրև կատարեաց Սողոմոն զաղօթսն. հուր էջ յերկնից. և եկեր զողջակէզսն. և զզոհսն. և փառքն 2 Տն լցին զտունն։ * Եւ ոչ ևս կարէին քահանայքն մտանել 'ի տունն Տն 'ի ժամանակին յայնմիկ. վասն զի լցին 3 փառքն Տն զտունն։ * Եւ ամենայն որդիքն Իէլի տեսանէին 'զիջանել հրոյն՝ և զփառսն Տն 'ի վերայ տանն. և անկան 'ի վերայ երեսաց երկրի քարայատակ տեղւոջն. և երկիր պագին. և օրհնեցին զՏր. զի բարի է. զի յաւիտեան է ողորմութիւն նր։ * 4 Եւ արքայ և ամ ժողովուրդն զենուին զոհս առաջի Տն։ * 5 ‖Եւ եզեն Սողոմոն ըզ զոհսն զուարակս քսան և երկու հազարս. և ոչխարս արօտականս հարիւր և քսան հազար. և արար զնաւակատիս տաճարին Այ արքայ, և ամենայն ժողովուրդն։ * 6 Եւ քահանայքն ըստ պահպանութեան իւրեանց կային. և ղևտացիքն նուագարանօք երգոցն Տն. և Դաւթայ արքայի, խոստովան լինել առաջի Այ. զի յաւիտեան է ողորմութիւն նր. օրհնութեամբն Դաւթայ 'ի ձեռն նր. և քահանայքն հարկանէին փողս առաջի նոցա. և ամենայն իէլ յոտն 7 կայր։ * Եւ սրբեաց Սողոմոն զմիջոց սրահին. որ էր 'ի տանն Տն. վասն զի անդ արար զողջակէզսն և զճարպն փրկութեան. քանզի սեղանն պղնձի. զոր արար Սողոմոն. ոչ կարէր ընդունել զողջակէզսն. և զամենայն. և զճարպսն։ * 8 Եւ արար Սողոմոն զտօնն 'ի ժամանակին յայնմ աւուրս եօթն. և ամենայն իէլ ընդ նմա եկեղեցի մեծ յոյժ. 'ի մտիցն Եմաթայ մինչև 'ի հեղեղատն Եգիպտոսի։ * 9 Եւ արար յաւուրն ութերորդի ելս. վն զի զնաւակատիսն արար սեղանոյն զեօթն օր 10 տօնին։ * Եւ 'ի քսան և յերիս ամսոյն եօթներորդի արձակեաց զժողովուրդն 'ի խորանս իւրեանց. ուրախութբ՝ և բարի սրտիւ յամենայն բարութիւնսն. զոր արար Տր Դաւթի՝ և Սողոմոնի. և ժողովրդեան իւրում 11 իէլի։ * ‖Եւ կատարեաց Սողոմոն ըզ տունն Տն. և զտունն արքայի. և զամենայն ինչ. զոր կամեցաւ անձն Սողոմոնի առնել 'ի տանն Տն և 'ի տանն իւրում. յաջողեցաւ։ * 12 Եւ երևեցաւ

Ած

‖2 Մակ. 2.10.

‖3 Թագ. 8. 63.

զոր արար Դաւիթ արքայ

‖3 Թագ. 9. 1.

Ած Սողոմոնի 'ի գիշերին յայնմ, եւ ասէ ցնա. լուայ աղօթից քոց. ընտրեցի զտեղիդ զայդ ինձ 'ի տուն զոհից: 13 * Եթէ արգելից զերկինս. եւ ոչ լինիցի անձրեւ. եւ եթէ պատուիրեցից մարախոյ ուտել զփայտ. եւ եթէ առաքեցից մահ 'ի ժողովուրդ իմ: 14 * Եւ եթէ ամաչեսցէ ժողովուրդ իմ յորոց կոչեցեալ է անուն իմ 'ի վերայ նց. եւ յաղօթս կացցեն՝ եւ խնդրեսցեն զերեսս իմ. եւ դարձցին 'ի ճանապարհաց իւրեանց չարաց. եւ ես լուայց յերկնից. եւ քաւիչ եղէց նոցա՝ եւ բժշկեցից զերկիր նց: 15 * Եւ այժմ աչք իմ եղիցին բաց. եւ ականջք իմ առ 'ի լսել զաղօթս 'ի տեղւոջս յայսմ: 16 * Եւ արդ՝ ահա ընտրեցի զտունս զայս. եւ սրբեցի զսա առ 'ի լինել անուան իմոյ աստ յաւիտեան. եւ եղիցին աչք իմ եւ սիրտ աստ՝ զամ աւուրս: 17 * Եւ դու եթէ գնասցես առաջի իմ իբրեւ զԴաւիթ հայր քո. եւ արասցես ըստ ամի. զորինչ պատուիրեցի քեզ. զհրամանս իմ, եւ զիրաւունս իմ պահեսցես: 18 * Կանգնեցից զաթոռ թագաւորութե քոյ. որպ ուխտեցի ընդ Դաւթի հօր քում, եւ ասացի. ոչ բարձցի քո այր առաջնորդ յիղէ: 19 * Ապա եթէ դարձջիք դուք՝ եւ թողջիք զհրամանս իմ. եւ զպատուիրանս իմ. զորս ետու առաջի իմ. եւ երթայցէք. պաշտիցէք զաստուածս օտարս. եւ երկիր պագանիցէք նց: 20 * Բարձից զձեզ յերկրէս՝ զոր ետու ձեզ. եւ զտունս զայս՝ զոր սրբեցի անուան իմոյ, 'ի բաց դարձուցից յերեսաց իմոց. եւ տաց զսա յառակ՝ եւ 'ի պատմութի յամ ազգս: 21 * Տունս զայս զբարձր. ամենայն, որ անցանիցէ առ սովաւ՝ զարմասցի եւ ասասցէ. ընդէր արար Տր երկրիս այսմ. եւ տանս այսմիկ: 22 * Եւ ասասցեն. վասն զի թողին զՏր Ած հարցն իւրեանց՝ որ եհան զնոսա յերկրէն Եգիպտոսի. եւ ընկալան զաստուածս օտարս. եւ երկիր պագին նոցա. եւ ծառայեցին նոցա. յաղագս այնորիկ ած 'ի վերայ դոցա զամենայն չարիսդ զայդոսիկ:

## Գլ. Ը:

Գ Թագ. 9.10.

1 Եւ եղեւ յետ քսան ամաց՝ յորս շինեաց Սողոմոն զտունն Տն եւ զտունն իւր: 2 * Եւ զքաղաքսն՝ զորս ետ Քիրամ Սողոմոնի՝ շինեաց զնոսա Սողոմոն. եւ բնակեցոյց անդ զորդիսն իղի: 3 * Եւ եկն Սողոմոն յԵմաթ Սոբայ. եւ զօրացոյց զնա: 4 * Եւ շինեաց զԹեդմոս յանապատին. եւ զամ քաղաքսն ամուրս շինեաց յԵմաթ: 5 * Եւ շինեաց զԲեթորոն վերին. եւ զԲեթորոն ներքին. քաղաքս ամուրս պարսպօք՝ եւ դրամբք՝ եւ նգօք: 6 * Եւ զԲաղաաթ. եւ զամ քաղաքսն ամուրս. որք էին Սողոմոնի. եւ զամ քաղաքս կառացն. եւ զամ քաղաքս ձիոց. եւ զորինչ ցանկացաւ Սողոմոն ըստ ցանկութե իւրում շինել յԵրուսաղէմ. եւ 'ի Լիբանան. եւ յամի թագաւորութեանն իւրում: 7 * Զամենայն ժողովուրդ՝ որ մնացեալ էր 'ի Քետացւոցն. եւ յԱմորհացւոցն. եւ 'ի Փերեզացւոցն. եւ 'ի Խեւացւոցն. եւ յԵբուսացւոցն. որք ոչ էին յորդւոցն իղի: 8 * Այլ էին յորդւոց այնոցիկ. որք մնացեալ էին ընդ նոսա յերկրին. զորս ոչ սատակեցին որդիքն իղի. եւ էած զնոսա Սողոմոն 'ի հարկատուս մինչեւ ցայսօր: 9 * Եւ յորդւոցն իղի ոչ եդ Սողոմոն 'ի ծառայս թագաւորութեն իւրոյ. վզի նոքա արք պատերազմօղք՝ եւ իշխանք զօրաւորք. իշխանք կառաց՝ եւ երիվարաց: 10 * Եւ սոքա էին իշխանք հրամանաց թագաւորութե Սողոմոնի. երկերիւր եւ յիսուն գործավարք ժողովրդեանն: 11 * Եւ զդուստրն փարաւոնի եհան Սողոմոն 'ի քաղաքէն Դաւթի 'ի տունն՝ զոր շինեաց նմա. վզի ասաց. ոչ բնակեսցի կին իմ 'ի քաղաքին իղի արքայի Դաւթի. վզի սբ է՝ որ եմուտ անդր՝ տապանակն Տն: 12 * Յայնժամ եհան Սողոմոն ողջակէզս Տն 'ի վր սեղանոյն նորա՝ զոր շինեաց յանդիման տաճարին: 13 * Եւ ըստ բանին աւուրց յաւուրս մատուցանել ըստ պատուիրանացն Մովսէսի 'ի շաբաթսն. եւ յամսամուտսն. եւ 'ի տօնսն. երիս ժամանակս 'ի տարւոջ, 'ի տօնի բաղարջոյն. եւ 'ի տօնի եօթներորդացն. 14 եւ 'ի տօնի տաղաւարահարացն: * Եւ կացոյց ըստ իրաւանցն Դաւթի զդասս քահանայիցն ըստ պաշտաման նոցա. եւ զՂեւտացիսն 'ի վերայ պահպանութեն իւրեանց. օրհնել՝ եւ պաշտել առաջի քահանայիցն ըստ օրինին օր ըստ օրէ. եւ դռնապանքն ըստ որոշմանն իւրեանց 'ի դրունս դրունս. վասն զի այսպէս էր պատուիրանն Դաւթայ առնն Այ: 15 * Եւ ոչ անցին զպատուիրանօքն արքայի յաղագս քահանայիցն եւ Ղեւտացւոց յամ բանի՝ եւ 'ի գանձարանսն: 16 * Եւ պատրաստեցաւ ամ գործն. յօրէ յորմէ սկսաւ. մինչեւ յօրն յորում կատարեաց Սողոմոն զտունն Տն: 17 * Յայնժամ գնաց Սողոմոն 'ի Գասիոնգաբեր. եւ յԵղամ. որ առ ծովեզերն հրէաստանի էր:

* Եւ

18 * Եւ առաքեաց Քիրամ 'ի ձեռն ծառայից իւրոց նաւս. և արք՝ որք գիտէին նաւել ընդ ծովն. և գնացին ընդ ծառայսն Սողոմոնի 'ի Սոփերայ. և առին անտի չորեքհարիւր և յիսուն տաղանդ ոսկւոյ. և եկին առ արքայ Սողոմոն ։

## ԳԼ: Թ.

3 Թագ. 10. 1. Մատ. 12.42. Ղուկ. 11.31.

1 Եւ ‖ թագուհին Սաբայ լուաւ զանուն Սողոմոնի. և եկն փորձել զՍողոմոն առակօք յԵրուսաղէմ. յոյժ ծանու զօրութբ՝ և ուղտուք. որք բարձեալ բերէին խունկս. և ոսկի բազում. և ականս պատուականս. և եկն առ Սողոմոն. և խօսեցաւ ընդ նմա զամ, որ ինչ էր 'ի միտս իւր ։ 2 * Եւ պատմեաց նմա Սողոմոն զամ բանս նր. և ոչ վրիպեցաւ բան մի 'ի Սողոմոնէ՝ զոր ոչ պատմեաց նմա ։ 3 * Եւ ետես թագուհին Սաբայ զիմաստութին Սողոմոնի. և զտունն՝ զոր շինեաց ։ 4 * Եւ զկերակուրս սեղանոյն. և զաթոռս ծառայիցն նր. և զկարգս պաշտօնէից նորա. և զպատմուճանս նց. և զմատռուակս նր. և զզգեստսն նց. և զողջակէզսն. զորս մատուցանէր 'ի տանն Տն, 'ի զարմացման եղև ։ 5 * Եւ ասէ ցարքայ. Ճշմարիտ էր բանն՝ զոր լուայ յերկրին իմում՝ յաղագս բանից քոց. և վս իմաստութե քոյ ։ 6 * Եւ ոչ հաւատացի բանիցն՝ մինչև եկի. և տեսին աչք իմ. և ահա ոչ է 'ի կէս, զորս պատմեցին ·'ի բազմութէ իմաստութեան քոյ, զոր յաւելեր 'ի համբաւն՝ զոր լուայ ։ 7 * Երանելիք են արքդ. և երանելիք կանայք քո՝ և ծառայքդ այդոքիկ՝ որք կան առ քեզ հանապազ՝ և լսեն զիմաստութի քո ։ 8 * Եղիցի Տր Ած օրհնեալ՝ որ հաճեցաւ ընդ քեզ. տալ զքեզ յաթոռ թագաւորութե իւրոյ՝ ժողովրդեանդ քում. զի յաղագս սիրելոյ Տն Այ քում զիէլ. և կացուցանելոյ զնա յաւիտեան՝ ետ զքեզ 'ի վերայ դոցա թագաւոր՝ առնել իրաւունս և զարդարութի ։ 9 * Եւ ետ արքայի հարիւր և քսան տաղանդ ոսկւոյ. և խունկս բազում յոյժ. և ականս պատուականս ։ և ոչ գոյր իբրև զխունկսն զայնոսիկ՝ զորս ետ տիկինն Սաբայ արքայի Սողոմոնի ։ 10 * Եւ ծառայքն Սողոմոնի՝ և ծառայք Քիրամայ. բերին ոսկի Սողոմոնի 'ի Սոփերայ. և փայտս նոճս. և ականս պատուականս ։ 11 * Եւ արար արքայ զփայտսն նոճ՝ աստիճանս տանն Տն՝ և տանն արքայի. և քնարս. և տաւիղս երգեցողացն. և ոչ երբէք երևեցաւ այնպէս յառաջագոյն յերկրին Յուդայ ։ 12 * Եւ արքայ Սողոմոն ետ տիկնոջն Սաբայ զամ, զոր ինչ կամեցաւ նա. և զոր ինչ խնդրեաց. բաց յայնցանէ՝ զոր ետ արքայի Սողոմոնի. և դարձաւ յերկիրն իւր ։ 13 * Եւ էր կշիռ ոսկւոյն՝ զոր բերին (Բերէին) Սողոմոնի 'ի միում տարւոջ. վեց հարիւր և վաթսուն և վեց տաղանդ ոսկւոյ ։ 14 * Առանց արանցն կարգեցելոց՝ և վաճառականացն՝ որք բերէին. և ամ թագաւորացն Արաբացւոց՝ և իշխանաց երկրին՝ որք բերէին ոսկի և արծաթ արքայի Սողոմոնի ։ 15 * Եւ արար արքայ Սողոմոն երեքհարիւր վահան ոսկի կռածոյ. վեցհարիւր դահեկան մաքուր ոսկի 'ի մի վահան ։ 16 * Եւ երեքհարիւր նիզակ ոսկի կռածոյ. երեքհարիւր դահեկան 'ի մի նիզակ յիւրաքանչիւրոք 'ի նոցանէ. և ետ զայն արքայ 'ի տուն անտառին Լիբանանու ։ 17 * Եւ արար արքայ աթոռ 'ի ժանեաց փղաց մեծ. և պատեաց զնա մաքուր ոսկւով ։ 18 * Եւ վեց աստիճանք էին աթոռոյն կապեալք ոսկւով. և անկիւնք աստի և անտի յաթոռն նստելոյ. և երկու առիւծք կային առ ոտս անկեանցն ։ 19 * Եւ երկոտասան առիւծք կային աստի, և անտի առ վեց աստիճանսն. և ոչ երբէք եղև այնպիսի յամ թագաւորութե ուրուք ։ 20 * Եւ ամ սպասք արքայի Սողոմոնի ոսկեղէնք. և ամ սպաս տան անտառին Լիբանանու ոսկւով բևեռեալ. և ոչինչ էր համարեալ արծաթ յաւուրս Սողոմոնի ։ 21 * Զանզի նաւ արքայի Սողոմոնի երթայր 'ի Թարսիս ընդ ծառայսն Քիրամայ. և մի անգամ՝ յերիս ամս գայր նաւն 'ի Թարսսայ արքայի լի ոսկւով՝ և արծաթով՝ և ժանեօք փղաց. և կապկաց. և սիրամարգօք ։ (Նոխազօք) 22 * Եւ մեծացաւ Սողոմոն քան զամ թագաւորս՝ ընչիւք և իմաստութբ ։ 23 * Եւ ամ թագաւորք երկրի խնդրէին զերեսս Սողոմոնի տեսանել. և լսել զիմաստութի նորա. զոր ետ Ած 'ի սիրտ նորա ։ 24 * Եւ նոքա բերէին իւրաքանչիւրոք ընծայս նմա՝ անօթս արծաթեղէնս. և անօթս ոսկեղէնս. և պատմուճանս. և զտաշխն. և խունկս. ձիս. և ջորիս՝ ամի ամի ։ 25 * Եւ էին Սողոմոնի ‖ չորք բիւրք մատակք ձիք 'ի կառս. և երկոտասան հազար երիվարք. և ետ զնս 'ի քաղաքս կառացն. և էին ընդ Սողոմոնի յԵրուսաղէմ ։

‖ 3 Թագ. 4.26.

26 * Եւ էր իշխան ամ թագաւորացն. 'ի գետոյն Եփրատայ մինչև յերկիրն այլազգեաց. և մինչև 'ի սահմանսն Եգիպտոսի ։ 27 * Եւ ետ արքայ զոսկի և

զար-

'պարծանք իբրեւ զքարինս յերուսաղէմ. եւ զփայտս մայրս իբրեւ զմոլեթզենիս 'ի դաշտս բազում: 28 *Եւ Էլք ձիոյն սաղոմոնի յեգիպտոսէ՝ եւ յամ երկրէ: 29 *Եւ մնացորդք բանիցն սաղոմոնի առաջինք եւ վերջինք. ահա գրեալ են 'ի բանս նաթանայ մարգարէի. եւ 'ի բանս աքիայ սիլոնացւոյ եւ 'ի տեսիլսն յովէլայ տեսանողի. վասն յերոբովամայ որդւոյ նաբատայ:

30 *Եւ թագաւորեաց արքայ սաղոմոն 'ի վերայ ամենայն իսրայէլի քառասուն ամ: 31 *Եւ ննջեաց սաղոմոն. եւ թաղեցին զնա 'ի քաղաքին դաւթի հօր իւրոյ. եւ թագաւորեաց ռոբովամ որդի նորա փոխանակ նորա:

## Գլ: Ժ:

3 Թագ 12.1.

1 Եւ եկն ռոբովամ 'ի սիւքեմ. վասն զի 'ի սիւքեմ գայր ամենայն իսրայէլ թագաւորեցուցանել զնա: 2 *Եւ եղեւ իբրեւ լուաւ յերոբովամ որդի նաբատայ. եւ ինքն էր յեգիպտոս փախուցեալ յերեսաց սաղոմոնի արքայի. եւ բնակիւր յերոբովամ յեգիպտոս. եւ դարձաւ յերոբովամ յեգիպտոսէ: 3 *Առաքեցին, եւ կոչեցին զնա. եւ եկն յերոբովամ եւ ամենայն եկեղեցին իսրայէլի. խօսեցան առ արքայ՝ եւ ասեն: 4 *Հայր քո խստացոյց զլուծ մեր. եւ արդ թեթեւ լացո զխիստ ծառայութիւն հօրն քո. եւ զլուծ նորա զծանր. զոր եդ 'ի վերայ մեր. եւ ծառայեսցուք քեզ: 5 *Եւ ասէ ցնոսա. երթայք մինչեւ յաւուրս երիս. եւ եկեսջիք առ իս. եւ գնաց ժողովուրդն: 6 *Եւ ժողովեաց արքայ ռոբովամ զծերսն. որք կային առաջի սաղոմոնի հօրն նորա. մինչդեռ կենդանի էր նա՝ եւ ասէ. զիա՞րդ թուի ձեզ. եւ զի՞նչ խորհիք պատասխանի առնել ժողովրդեանն այնմ, բան ինչ: 7 *Եւ խօսեցան ընդ նմա՝ եւ ասեն. եթէ այսօր լինիս բարի ժողովրդեանդ այդմ. եւ հաճոյ լիցիս. եւ խօսեսցիս ընդ նոսա բանս բարիս. եւ եղիցին քեզ ծառայք զամենայն աւուրս: 8 *Եւ եթող զխորհուրդ ծերոցն. զոր խորհեցան ընդ նմա. եւ խորհեցաւ ընդ մանկտի սննդակիցսն իւր. որք կային առաջի նորա: 9 *Եւ ասէ ցնոսա. զի՞նչ թուի ձեզ. եւ պատասխանի տաց բան ժողովրդեանն այնմիկ. որք խօսեցան ընդ իս՝ եւ ասացին. թողացո 'ի լծոյն. զոր եդ հայր քո 'ի վերայ մեր: 10 *Եւ խօսեցան ընդ նմա մանկտի սննդակիցքն նորա. այսպէս խօսեսցիս ընդ ժողովրդեանդ. որ խօսեցաւ ընդ քեզ՝ եւ ասաց. հայր քո ծանրացոյց զլուծն մեր. եւ դու թող մեզ. այսպէս ասասցես. փոքր մատն իմ ստուարագոյն է քան զմէջ հօր իմոյ: 11 *Եւ արդ հայր իմ խրատեաց զձեզ ծանր լծով. եւ ես յաւելից 'ի լուծն ձեր. հայր իմ խրատեաց զձեզ գանակօք. եւ ես խրատեցից զձեզ կարիճօք: 12 *Եկն յերոբովամ, եւ ամենայն ժողովուրդն առ ռոբովամ յաւուրն երրորդի. որպէս խօսեցաւ արքայ՝ եւ ասաց. դարձջիք առ իս յաւուրն երրորդի: 13 *Եւ պատասխանի արար արքայ խիստ. եւ եթող արքայ ռոբովամ զխորհուրդ ծերոցն: 14 *Եւ խօսեցաւ ընդ նոսա ըստ խորհրդեան մանկանցն՝ եւ ասէ. հայր իմ ծանրացոյց զլուծ ձեր. եւ ես յաւելից յայնմ. հայրն իմ խրատեաց զձեզ գաւազանօք. եւ ես խրատեցից զձեզ կարիճօք: 15 *Եւ ոչ լուաւ արքայ ժողովրդեանն. վասն զի էր կործանումն յԱստուծոյ. եւ հաստատեաց Տէր զբանն իւր. զոր խօսեցաւ 'ի ձեռն աքիայ սիլոնացւոյ յաղագս յերոբովամու որդւոյ նաբատայ. եւ ամենայն իսրայէլի:

3 Թագ 11.29.

16 *Եւ ոչ լուաւ արքայ նոցա. պատասխանի ետ ժողովուրդն արքային՝ եւ ասեն. զի՞նչ բաժին կայ մեր ընդ դաւթի. եւ կամ ժառանգութիւն ընդ որդւոյն յեսսեայ. երթ՝ գնա 'ի բնակութիւս քո իսրայէլ. եւ արդ տես դու զտունն քո դաւիթ: եւ գնաց ամենայն իսրայէլ 'ի բնակութիւնս իւր: 17 *Եւ արքն իսրայէլի մնացեալքն 'ի քաղաքսն յուդայ՝ թագաւորեցուցին 'ի վերայ իւրեանց զռոբովամ: 18 *Եւ առաքեաց արքայ ռոբովամ զադոնիրամ. որ էր 'ի վերայ հարկացն. եւ քարկոծեցին զնա որդիքն իսրայէլի քարամբք, եւ մեռաւ. եւ արքայ ռոբովամ փութացաւ ելանել 'ի կառսն իւր՝ եւ փախչել յերուսաղէմ: 19 *Եւ անգոսնեաց իսրայէլ զտունն դաւթայ մինչեւ յօրս յայս:

## Գլ: ԺԱ:

3 Թագ 12.21.

1 Եւ եկն ռոբովամ յերուսաղէմ. եւ ժողովեաց զյուդաս՝ եւ զբենիամին հարիւր եւ ութսուն հազար երիտասարդաց. որք առնէին պատերազմ. եւ տայր պատերազմ ընդ իսրայէլի դարձուցանել զթագաւորութիւն յինքն: 2 *Եւ եղեւ բան Տեառն առ սամեաս այրն Աստուծոյ՝ եւ ասէ: 3 *Խօսեաց ընդ ռոբովամու որդւոյ սաղոմոնի. եւ ընդ ամենայն յուդայ եւ բենիամենի՝ եւ ասասցես: 4 *Այսպէս ասէ Տէր. մի՛ ելանիցէք՝ եւ մի՛ պատերազմիք ընդ եղբարս ձեր. դարձցի իւրաքանչիւրոք 'ի տուն իւր. վասն զի յինէն եղեւ բանդ այդ: եւ լուան բանին Տեառն. եւ դարձան՝ ոչ եւս երթալ 'ի վե֊

'ի վերայ յերոբովամայ ։ 5 * Եւ բնա_
կեցաւ ռոբովամ յերուսաղէմ. և շինեաց
քաղաքս պարսպաւորս 'ի հրէաստա_
նի ։ 6 * Եւ շինեաց զբեթղեհէմ. և զե_
տամն. և զթեկուեայ ։ 7 * Եւ զբեթսու_
րայ, և զսոկքով. և զոդողամ ։ 8 * Եւ
զգեթ. և զմարիսան. և զզիփ ։ 9 * Եւ
զադօրայիմ. և զղաքիս. և զազեկայ ։
10 * Եւ զսարաայ. և զէաղօն. և զքեբ_
րօն. որ էր 'ի յուդայ. և 'ի բենիամին
քաղաքս պարսպաւորս ։ 11 * Եւ ամրա_
ցոյց զնոսա պարսպօք. և եդ 'ի նոսա իշ_
խանս՝ և համբարս կերակրոց՝ ձէթ և
գինի ։ 12 * Ըստ քաղաքաց՝ վահանս, և
նիզակս. և զօրացոյց զնոսա յաճախութիւն
յոյժ. և էին նորա յուդաս և բենիամին ։
13 * Եւ քահանայքն՝ և ղևտացիքն, որք
էին յամենայն իսրայէլի, ժողովեցան առ նա յամենայն
սահմանացն. վասն զի թողին ղևտա_
ցիքն զբնակութիւնս կալուածոցն իւր_
եանց. և գնացին առ յուդայ յերուսաղէմ ։
14 * Վասն զի եհան զնոսա յերոբովամ.
և որդիք նորա. ոչ ևս պաշտել զՏէր ։
15 * Եւ կացոյց իւր քուրմս բարձանցն
և կռոցն. և սնոտեացն. և երինջոցն.
զորս արար յերոբովամ ։ 16 * Եւ եհան
զնոսա 'ի ցեղիցն իսրայէլի. որք ետուն ըզ_
սիրտս իւրեանց խնդրել զՏէր Աստուած
իսրայէլի. և եկին յերուսաղէմ զոհել Տեառն
Աստուծոյ հարցն իւրեանց ։ 17 * Եւ զօրացու_
ցին զթագաւորութիւնն յուդայ. և հզօ_
րացաւ ռոբովամ որդի սաղոմոնի ամս
երիս. վասն զի գնաց 'ի ճանապարհս
դաւթի և սաղոմոնի զերիս ամս ։
18 * Եւ էառ իւր ռոբովամ կին զմօղաթ
դուստր յերիմութայ որդւոյ դաւթի.
և զաբիհաթ դուստր եղիաբայ որդւոյ
եսսեայ ։ 19 * Եւ ծնաւ նմա որդիս. զյե_
բուս. և զսամարիայ. և զաղոմ ։
20 * Եւ յետ այսորիկ էառ զմաաքայ
զդուստր աբեսաղոմայ. և ծնաւ նմա
զաբիաս. և զեթթի և զզիզայ. և զսա_
ղեմօթ ։ 21 * Եւ սիրեաց ռոբովամ զմաա_
քայ դուստր աբեսաղոմայ քան զամե_
նեսեան զկանայսն իւր. և զհարճսն
իւր. վասն զի կանայս ունէր ութն և
տասն. և հարճս վաթսուն. և ծնաւ
ուստերս քսան և ութն. և դստերս
վաթսուն ։ 22 * Եւ կացոյց իշխան ռո_
բովամ զաբիայ. որ էր 'ի մաաքայ, իշ_
խան 'ի վերայ եղբարցն իւրոց ։ վասն զի
թագաւորեցուցանել խորհէր զնա ։
23 * Եւ աճեաց առաւել քան զամենայն որ_
դիս նորա. յամենայն սահմանսն յուդայ և
բենիամինի ։ և 'ի քաղաքսն ամուրս. և
եդ 'ի նոսա կերակուրս բազում յոյժ.
և խնդրեաց զբազմութիւն կանանց ։

Գ Թագ. 12.31. (margin, at verse 15)

## ԳԼ։ ԺԲ.

1 Եւ եղև իբրև պատրաստեցաւ
թագաւորութիւնն ռոբովամայ.
և յորժամ զօրացաւ՝ եթող զպատուի_
րանսն Տեառն ։ և ամենայն իսրայէլ ընդ նմա ։ 2 * Եւ
եղև 'ի հինգերորդի ամի թագաւո_
րութեանն ռոբովամայ. ել սուսակիմ
արքայ եգիպտոսի 'ի վերայ երուսա_
ղեմի. վասն զի մեղան առաջի Տեառն ։
3 * Հազար և երկերիւր կառօք. և վաթ_
սուն հազար երիվարօք. և ոչ գոյր թիւ
բազմութեանն եկելոյ ընդ նմա յեգիպ_
տոսէ. լիբեացիք. տրոգղոդացիք. և
եթէովպացիք ։ 4 * Եւ զօրացան 'ի վերայ
ամուր քաղաքացն. որք էին յուդայ.
և եկն յերուսաղէմ ։ 5 * Եւ սամէաս մարգա_
րէ եկն առ ռոբովամ, և առ իշխանսն
յուդայ ժողովելոցն յերուսաղէմ
յերեսաց սուսակիմայ. և ասէ ցնոսա.
այսպէս ասէ Տէր. դուք թողէք զիս.
և ես թողի զձեզ 'ի ձեռս սուսակի_
մայ ։ 6 * Եւ ամաչեցին իշխանքն իսրայէլի
և արքայն. և ասեն. արդար է Տէր ։
7 * Եւ իբրև ետես Տէր եթէ պատկա_
ռեցան. եղև բան Տեառն առ սամէաս՝ և
ասէ. պատկառեցան. ոչ ապականե_
ցից զդոսա. տաց զդոսա իբրև սակաւ
մի 'ի փրկութիւն. և մի՛ հալեսցէ սրտ_
մտութիւն իմ 'ի վերայ երուսաղեմի ։ 8 * Այլ եղի_
ցին ինձ 'ի ծառայս. և ծանիցեն զծա_
ռայութիւն իմ. և զծառայութիւն թա_
գաւորութեան երկրիս ։ 9 * Եւ ել սու_
սակիմ արքայ եգիպտոսի. և էառ
զգանձսն. որք էին 'ի տանն Տեառն.
և զգանձս տան արքային զամենայն էառ.
էառ և զվահանսն ոսկեղէնս. զոր ա_
րար սաղոմոն ։ 10 * Եւ արար ռոբովամ
վահանս պղնձիս փոխանակ նոցա. և կա_
ցոյց 'ի վերայ նոցա սուսակիմ իշխանս
սուրհանդակացն. որք պահէին ըզ_
դուռն արքային ։ 11 * Եւ լինէր 'ի մտա_
նել արքային 'ի տունն Տեառն. մտանէին
և պահապանքն՝ և սուրհանդակքն.
և դառնային ընդդառաջ սուրհանդա_
կացն ։ 12 * Եւ 'ի պատկառելն նորա.
դարձաւ 'ի նմանէ բարկութիւն Տեառն. և
ոչ ապականեցաւ իսպառ. վասն զի
էին բանք բարիք 'ի յուդայ ։ 13 * Եւ
զօրացաւ ռոբովամ՝ յերուսաղէմ. և
թագաւորեաց ։ քառասուն և միոյ
ամի էր 'ի թագաւորելն իւրում. և
զեօթնուտասն ամ թագաւորեաց
յերուսաղէմ քաղաքի. զոր ընտրեաց Տէր
անուանել զանուն իւր յամենայն ցեղիցն
իսրայէլի ։ և անուն մօրն նորա նոոմայ ամո_
նացի ։ 14 * Եւ արար չար. վասն զի ոչ
ուղղեցաւ սիրտ նորա խնդրել զՏէր ։

3 Թագ. 14.21. (margin, at verse 13)

15 *Եւ բանքն ռոբովամայ առաջինք և վերջինք. ոչ ահա գրեալ են 'ի բանս սամեայ մարգարէի. և ադդովայ տեսանողի. և գործքն նր: և պատերազմ մէր ռոբովամ ը՟ն յերոբովամայ զա՟մ աւուրս: 16 *Եւ մեռաւ ռոբովամ. և թաղեցաւ ընդ հարս իւր 'ի քաղաքին դաւթի: և թագաւորեաց աբիաս որդի նորա փոխանակ նորա:

## ԳԼ: ԺԳ:

1 Յութուտասներորդի ամի թագաւորութեն յերոբովամայ. թագաւորեաց աբիաս 'ի վր՟ յուդայ: 2 *Ամս երիս թագաւորեաց եՀմի: և անուն մօր նորա մաաքայ. դուստր աբեսողոմայ: և էր պատերազմ 'ի մէջ աբիայ, և 'ի մէջ յերոբովամայ:

3 Թագ 15. 2.

3 *Եւ կարգեցաւ աբիաս 'ի մարտին զօրաւոր մարտիկօք. չորեքհարիւրհազարօք արամբք զօրաւորօք: և յերոբովամ ճակատեցաւ ընդդէմ նորա 'ի պատերազմին ութնհարիւրհազարօք զօրաւորօք պատերազմողացն զօրութե՟: 4 *Եւ յարեաւ աբիաս 'ի լեռնէն սոմորոնայ. որ էր 'ի լերինն եփրեմի. և ասէ: Լուարուք յերոբովամ և ա՟մ իսրայէլ: 5 *Ոչ է ձեր ճանաչել. եթէ Տր Այ՟ իէլի ետ զթագաւորութիւնն իէլի յաւիտեան դաւթի՝ և որդւոց նր՟ ուխտ աղի:

3 Թագ 15.7.

6 *Եւ յարեաւ յերոբովամ որդի նաբատայ. ծառայ սողոմոնի որդւոյ դաւթի. և ապստամբեցաւ 'ի Տէ իւրմէ: 7 *Եւ ժողովեցան առ նա արք ժանտք. որդիք անօրէնք: և ընդդէմ եկաց ռոբովամայ որդւոյ սողոմոնի: և ռոբովամ էր մանուկ՝ և երկչոտ սրտիւ. և ոչ եկաց ընդդէմ նորա: 8 *Եւ արդ՝ դուք ասէք կալ հակառակ երեսաց թագաւորութե Տն. որ է 'ի ձեռս որդւոյ դաւթի: և դուք բազումք էք յոյժ. և ընդ ձեզ երինջքդ ոսկեղէնք. զորս արար ձեզ յերոբովամ յաստուածս:

3 Թագ 11. 26.

9 *Միթէ ոչ հանիք դուք զքահանայսն Տն. զորդիսն ահարոնի՝ և զղեւտացիսն. և արարիք ձեզ քուրմս 'ի ժողովրդենէ երկրիդ. ամենեքեան որք գային լնուլ զձեռս զուարակօք յարջառոց. և եօթն խոյօք: և լինէր քուրմ ոչաստուծոյն:

3 Թագ 12.31.

10 *Եւ մեք զՏր Այ՟ մեր ոչ թողաք. և քահանայքն նր պաշտեն զՏր. որդիք ահարոնի՝ և ղեւտացիք. և հանապազորդեալքն 'ի նոցանէ ծխեն զխունկս Տն: 11 *Եւ զողջակէզսն ը՟ն առաւօտս և ընդ երեկոյս. և զխունկսն խառնուածոյս. և հացքն առաջադրութե 'ի վերայ սրբոյ սեղանոյն. և աշտանակն ոսկեղէն, և ճրագունքն վառեալք՝ յերեկորեայ լուցեալք. վս՟ զի պահեմք մեք զպահպանութիւնս Տն Այ՟ հարցն մերոց. և դուք թողէք 12 զնա: *Եւ ահաւասիկ ընդ մեզ իշխանն Տն. և քահանայքն նր. և փողք նշանակաց նշանակել մեզ: և դուք որդիք իսրայէլի պատերազմիք ընդ Տն Այ՟ հարցն մերոց. և ոչ ևս յաջողեսցի ձեզ: 13 *Եւ յերոբովամ դարձոյց զդարանակալսն գալ նմա զկնի 'ի կողմանէ. և եղեն առաջի յուդայ. և դարանակալքն յետուստ: 14 *Եւ դարձաւ յուդաս. և ահա պատերազմն նոցա առաջի և զկնի: և գոչեցին առ Տր. և 15 քահանայքն հարին զփողսն: *Եւ գոչեցին արք յուդայ. և եղև 'ի գոչել արանց յուդայ. և Տր եհար զյերոբովամ՝, և զիէլ առաջի աբիայ՝ և յուդայի: 16 *Եւ փախեան որդիքն իէլի յերեսաց յուդայ. և մատնեաց զնս Տր 17 'ի ձեռս նոցա: *Եւ եհար 'ի նոցանէ աբիա և զօրն նր հարուածս մեծամեծս: և անկան վիրաւորք յիսրայէլէ հինգհարիւրհազար արք զօրաւորք: 18 *Եւ նկուն եղեն որդիքն իէլի յաւուր յայնմիկ: և զօրացան որդիքն յուդայ. վասն զի յուսացան 'ի Տր Այ՟ հարցն 19 իւրեանց: *Եւ հալածեաց աբիաս զյերոբովամ. և էառ 'ի նմանէ քաղաքս. զբեթէլ՝ և զգեօղս նր. և զասանայ՝ և զգեօղս նր. և զեփրոն, և զդստերս նր: (և զբեայ և զգեօղս նր:) 20 *Եւ ոչ ևս գոյր զօրութի յերոբովամայ զա՟մ աւուրս աբիայ: և եհար զնա 21 Տր. և վախճանեցաւ: *Եւ զօրացաւ աբիաս: և էառ իւր կանայս չորեքտասան. և ծնաւ ուստերս քսան և երկուս. 22 և դստերս վեշտասան: *Եւ մնացեալ բանքն աբիայ. և գործքն նր՝ և խօսք նորա. ահա գրեալ են 'ի գիրս մարգարէին ադդովայ:

## ԳԼ: ԺԴ:

1 Եւ մեռաւ աբիաս ը՟ն հարս իւր. և թաղեցին զնա 'ի քաղաքին դաւթի: և թագաւորեաց ասա որդի նր փոխանակ նր: յաւուրս ասայի հան դարտեցաւ երկիրն յուդայ ամս տասն: 2 *Եւ արար բարի և ուղղութի առաջի Տն Այ՟ իւրոյ: 3 *Եւ 'ի բաց արար զսեղանս օտարացն. և զբարձունսն. և խորտակեաց զարձանսն. և այրեաց զանտառսն: 4 *Եւ ասաց ցյուդայ. խնդրել զՏր Այ՟ հարց իւրեանց. և առնել զօրէնս և զպատուիրանս: 5 *Եւ 'ի բաց արար յա՟մ քաղաքացն յուդայ զսեղանսն. և զկուռս. և խա

3 Թագ 15.8.

ղա-

զաղացանն քաղաքք պարսպաւորք յերկրին յուդայ ։ 6 * Զի խաղաղացաւ երկիրն . և ոչ գոյր ուստեք նմա պատերազմ յամսն յայնոսիկ . վասն զի հանգոյց զնա Տր ։ 7 * Եւ ասէ ցյուդայ՝ շինեսցուք զքաղաքսն զայնոսիկ ։ և արասցուք պարիսպ . և աշտարակս . և դրունս . և նիգս . որովք տիրեսցուք երկրիս . զի զորօրինակ խնդրեցաք զՏր Ա.Ծ մեր . և նա խնդրեաց զմեզ . և հանգոյց զմեզ շուրջանակի . և յաջողեաց մեզ ։ 8 * Եւ եղև ասայի զօր զինակրաց . որք բառնային վահանս և նիզակս յերկրին յուդայ . երեքհարիւր հազար ։ յերկրին բենիամինի ասպարաւորք՝ և աղեղնաւորք՝ երկերիւր և վաթսունհազար . ամենեքեան նոքա պատերազմօղք զօրութե ։ 9 * Եւ ել 'ի վերայ նց զարեհ եթէօպացի զօրութբ հազարհազարօք՝ և երեքհարիւր կառօք . և եկն մինչև 'ի մարեսայ ։

10 * Եւ գնաց ասա ընդդէմ նր . և ճակատեցաւ պատերազմն 'ի ձորն .'ի հիւսիսոյ մարեսայ ։ 11 * ‖ Եւ գոչեաց ասա առ Տր Ա.Ծ իւր . և ասէ ։ Տր Ա.Ծ ոչ տկարանայ.քեզ ապրեցուցանել բազմօք և սակաւուք ։ զօրացո զմեզ Տր Ա.Ծ մեր . վասն զի 'ի քեզ յուսացաք . և անուամբ քով եկաք 'ի վերայ բազմութեա այսորիկ ։ Տր Ա.Ծ մեր՝ մի յաղթահարեսցէ զքեզ մարդ ։ 12 * Եւ եհար Տր զեթէօպացիսն առաջի յուդայ ։ և փախեան եթէօպացիքն ։ 13 * Եւ հալածեաց ասա՝ և զօրն իւր մինչև 'ի գեդովր ։ և անկան եթէօպացիքն մինչև ոչ մնալ 'ի նոցանէ ապրեալ . քանզի խորտակեցան առաջի Տն . և առաջի զօրութե նորա ։ և կողոպտեցին աւար բազում ։ 14 * Եւ կործանեցին զգեօղս նոցա շուրջ զգեդուրաւն . վն զի եղեն արհաւիրք 'ի Տէ 'ի վր նոցա . և առին աւար զամ.քաղաքս նց . քանզի աւար բազում եղև նոցա ։ 15 * Այլ և զվրանս անասնոցն նց առին .( և զմիասանիսն կոտորեցին .) և առին խաշինս բազումս . և ուղտս . և դարձան յեմ ։

‖ Թագ. 14. 6.

## ԳԼ. ԺԵ.

Եւ ազարիաս որդի ադդայ եղև 'ի վր նորա Հոգի Տն ։ 2 * Եւ ել ը առաջ ասայի . և ամյուդայ՝ և բենիամինի՝ և ասէ ։ լուարուք ինձ . ասա, և ամյուդա՝ և բենիամին . Տր ընդ ձեզ . վասն լինելոյ ձերոյ ընդ նմա ։ և արդ եթէ խնդրէք զնա, գտցի ձեզ ։ և եթէ թողուք զնա՝ թողցէ զձեզ ։ 3 * Եւ աւուրք բազումք Իլի եղեն՝ ոչ Ա.Ծ ճշմրիտ . և ոչ քահանայ՝ որ ցուցանէր . և ոչ օրէնք ։ 4 * Որ դարձոյց զնոսա 'ի Տր Ա.Ծ իղի . և գտաւ 'ի նոսա ։ 5 * 'Ի ժամանակին յայնմիկ ոչ գոյր խաղաղութի այնոցիկ . որք մտանէին . և որք ելանէին . վասն զի արհաւիրք 'ի Տէ անկան 'ի վր ամենեցուն բնակչաց գաւառացն ։ 6 * Եւ պատերազմէր ազգ ընդ ազգի . և քաղաք ընդ քաղաքի . վասն զի Ա.Ծ զարհուրեցոյց զնոսա ամնեղութբք ։ 7 * Եւ արդ դուք զօրացարուք . և մի լքցին ձեռք ձեր . քանզի գոն վարձք գործոց ձերոց ։ 8 * Եւ 'ի լսել զբանս զայսոսիկ . և զմարգարէութի ազարիայ մարգարէի՝ զօրացաւ ։ և եհան արտաքս զամ զպղծութիս յամ երկրէն յուդայ՝ և բենիամինի՝ և 'ի քաղաքացն . զորս կալաւ 'ի լերինն եփրեմի ։ և արար նաւակատիս սեղանոյն Տն . որ էր առաջի տաճարին Տն ։ 9 * Եւ եկեղեցացոյց զյուդայ՝ և զբենիամին . և զեկսն . և զպանդուխտսն ընդ նմա . յեփրեմայ . և 'ի մանասէէ . և 'ի շմաւոնէ . վասն զի յաւելան 'ի նա բազումք յիղէ 'ի տեսանելն նց . եթէ Տր Ա.Ծ նոցա ընդ նմա է ։ 10 * Եւ ժողովեցան յեմ յամսեանն երրորդի . 'ի հնգետասաներորդումամի թագաւորութեն ասայի ։ 11 * Եւ եղեն Տն յաւուրն յայնմ յաւարացն . զոր ածին . զուարակս եօթնհարիւր . և ոչխարս եօթնհազար ։ 12 * Եւ եդ ուխտ խնդրել զՏր Ա.Ծ հարցն իւրեանց յամ սրտէ . և 'ի բոլոր անձնէ ։ 13 * Եւ ամ, որ ոչ խնդրէ զՏր Ա.Ծ իղի՝ մեռցի . յերիտասարդէ մինչև 'ի ծերն . և յառնէ մինչև 'ի կին ։ 14 * Եւ երդուան Տն մեծաձայն . և եղջերաւ փողովն ։ 15 * Եւ ուրախ եղև ամյուդայ վն երդմանն . զի յամ սրտից իւրեանց երդուան . և ամ կամօք խնդրեցին զնա . և գտաւ նոցա ։ և հանգոյց զնոսա Տր շուրջանակի ։ 16 * ‖ Եւ զմաաքայ զմայրն իւր 'ի բաց մերժեաց . վասն զի էր աստարտեայ պաշտօնեայ ։ և խորտակեաց զկուռսն . և այրեաց 'ի հեղեղատին կեդրոնի ։ 17 * Սակայն զբարձունսն ոչ բարձին . և տակաւին ևս կայր 'ի յուդայ և յիէլ ։ բայց սիրտն ասայի եղև լի զամ աւուրս կենաց իւրոց ։ 18 * Եւ տարաւ 'ի ներքս զսրբութիւն դաւթի հօր իւրոյ . և զսրբութիւնն Տն Ա.Յ . արծաթ . և ոսկի . և սպաս ։ 19 * Եւ պատերազմ ոչ գոյր նմա . մինչև յերեսներորդի և հինգերորդ ամի թագաւորութեն ասայի ։

Էբրա. դարձան 'ի նեղու. թե իւր. եանց առ Տր Ա.Ծ իսրայելի

‖ Գ Թագ. 15. 13.

## ԳԼ. ԺԶ։

1 Եւ յերեսներորդ ութերորդ ամի թագաւորութեան Ասայի, ել Բաասա արքայ Իլ̄ի ի վր̄ Յուդայ. եւ շինեաց զՀռամայ. ոչ տալով ելս Ասայի արքայի Յուդայ։ 2 *Եւ էառ Ասա ոսկի. եւ արծաթ ի գանձուց տանն Տն̄. եւ ի տանէ թագաւորին. եւ առաքեաց առ որդին Ադերայ արքային Ասորեաց. որ բնակէր ի Դամասկոս. եւ ասէ. 3 *Ուխտ ի մէջ իմ եւ քո. եւ ի մէջ հօր իմոյ եւ հօր քոյ։ Ահաւասիկ առաքեցի քեզ ոսկի եւ արծաթ. եկ՝ եւ մերժեա յինէն զԲաասա արքայ Իլ̄ի. եւ գնասցէ ի բաց յինէն։ 4 *Եւ լուաւ որդին Ադերայ արքայ Ասորւոց. եւ առաքեաց զիշխանս զօրուցն իւրոց ի քաղաքսն Իլ̄ի. եւ եհար զԱւոն. եւ զԴան. եւ զԱբեղմային. եւ զամ̄ շուրջ զգաւառաւն Նեփթաղիմայ։ 5 *Եւ եղեւ՝ իբրեւ լուաւ Բաասայ, ի բաց արձակեաց ուրեմն շինել զՀռամայ. եւ դադարեաց գործն նր̄։ 6 *Եւ Ասա արքայ եած զամ̄ Յուդաս. եւ բարձին զքարինս Հռամայ. եւ զփայտս նր̄. զոր շինեաց Բաասայ. եւ շինեաց նոքօք զԳաբաայ. եւ զՄասփայ։ 7 *Ի ժամանակին յայնմ եկն Անանիաս մարգարէ առ Ասա արքայ Յուդայ՝ եւ ասէ ցնա. Վասն զի յուսացար դու յարքային Ասորեաց. եւ ոչ յուսացար ի Տր̄ Ած̄ քո. յաղագս այնորիկ ապրեցաւ զօր արքային Իլ̄ի ի ձեռաց քոց։ 8 *Ոչ ապաքէն ‖Եթեովպացիք՝ եւ Լիբեացիք՝ էին զօրք բազումք. համարձակութբ̄ բազում հեծելովք յոյժ եկին. եւ ի յուսալն քո ի Տր̄. մատնեաց զնոսա Տր̄ ի ձեռս քո։ 9 *‖Զի աչք Տն̄ հային յամ̄ երկիր զօրացուցանել յամ̄ ի սրտից զնա։ Եւ արդ ադխտացար յայդմիկ. յայսմհետէ եղիցի ձեզ պատերազմ։ 10 *Եւ սրտմտեցաւ Ասա մարգարէին. եւ եդ զնա ի բանտի. վասն զի բարկացաւ յաղագս այնորիկ։ Եւ ժանտացաւ Ասա ի ժողովրդն ի ժամանակին յայնմ։ 11 *Եւ ահա բանք Ասայի առաջինք եւ վերջինք՝ գրեալ են ի գիրս թագաւորաց Յուդայ, եւ Իլ̄ի։ 12 *Եւ ախտացան Ասայի ոտք, յերեսներորդի եւ յիններորդի ամի թագաւորութեան իւրոյ. եւ յոյժ հիւանդացաւ. եւ ի հիւանդանալն իւրում ոչ խնդրեաց զՏր̄. այլ խնդրեաց բժիշկս։ 13 *Եւ ննջեաց Ասա ը̄ հարս իւր՝ եւ վախճանեցաւ ի քառասներորդի եւ յառաջնում ամի թագաւորութեան իւրոյ։ 14 *Եւ թաղեցին զնա ի շիրմին. զոր փորեաց իւր ի քաղաքին Դաւթի. եւ ընկողմանեցուցին զնա ի դահոյսն. եւ լցին խնկովք՝ եւ ազգի ազգի իւղովք իւղեփեցաց. եւ արարին նմա յուղարկաւորութի մեծ յոյժ։

‖ Մն̄ եր. 14. 9.

‖ 2. Մն̄ 9. 5. Յօհա. 7. 38.

## ԳԼ. ԺԷ։

1 Եւ թագաւորեաց Յովսափատ որդի նորա փոխանակ նր̄. եւ զօրացաւ 2 Յովսափատ ի վր̄ Իլ̄ի։ *Եւ եդ զօրս յամ̄ քաղաքսն Յուդայ յամուրս. եւ կացոյց իշխանս յամ̄ քաղաքսն Եփրեմի. զորս էառ Ասա հայրն նր̄։ 3 *Եւ եղեւ Տր̄ ընդ Յովսափատայ. վ̄ զի գնաց ի ճանապարհս հօր իւրոյ յառաջինս. եւ ոչ խնդրեաց զկուռս։ 4 *Այլ զՏր̄ Ած̄ հօր իւրոյ խնդրեաց. եւ ի պատուիրանս հօրն իւրոյ գնաց. եւ ոչ էին իբրեւ զԻլ̄ի գործք նորա։ 5 *Եւ յաջողեցաւ թագաւորութին ի ձեռս նորա. եւ ետ ամ̄ Յուդա ընծայս Յովսափատայ. եւ եղեւ նորա մեծութի 6 եւ փառք բազում։ *Եւ բարձրացաւ սիրտ նր̄ ի ճանապարհս Տն̄. եւ այլեւս եբարձ զբարձաւանդակս, եւ զանտառսն յերկրէն Յուդայ։ 7 *Եւ յերրորդ ամի թագաւորութեան իւրոյ առաքեաց զիշխանսն իւր. եւ զորդիս զօրութեանցն. զԱբդիաս. եւ զԶաքարիաս. եւ զՆաթանայէլ. եւ զՄիքէաս. ուսու-8 ցանել ի քաղաքսն Յուդայ։ *Եւ ընդ նոսա ղեւտացիքն. Սամուէաս. եւ Նաթանիաս. եւ Զաբդիաս. եւ Ասիէլ. եւ Սեմիրամովթ. եւ Յովնաթան. եւ Ադոնիաս. եւ Տուբադոնիաս ղեւտացիք. եւ ընդ նոսա Եղիսամայ. եւ Յորամ քահա-9 նայք։ *Եւ ուսուցանէին զՅուդայ. եւ ընդ նոսա գիրք օրինացն Տն̄. եւ անցանէին ընդ քաղաքսն Յուդայ. եւ ու-10 սուցանէին զժողովուրդն։ *Եւ եղեն արհաւիրք ի Տէ̄ ի վր̄ թագաւորաց երկրին. որք էին շուրջ զՅուդայիւ. եւ ոչ պատերազմէին ընդ Յովսափա-11 տայ։ *Եւ յայլազգեացն բերէին Յովսափատայ ընծայս. ոսկի. եւ արծաթ. եւ պատարագս. եւ արաբացիքն ածէին նմա խոյս յոչխարացն՝ եօթնհազար եւ եօթնհարիւր. եւ նոխազս եօթնհա-12 զար եւ եօթնհարիւր։ *Եւ երթալով Յովսափատ մեծանայր ի բարձրութի. եւ շինեաց տունս ի Հրէաստանի, 13 քաղաքս ամուրս։ *Եւ գործք բազումք եղեն նորա ի Հրէաստանի. եւ արք զօրաւորք պատերազմօղք ուժով 14 յԵրուսաղէմ։ *Եւ այս էր թիւ նր̄ ըստ տանց տոհմիցն իւրեանց ի Յուդայի հազարապետք. Եդնաս իշխան. եւ ընդ նմա որդիք զօրաւորք զօրու-15 թբ̄ երեքհարիւր հազար։ *Եւ ընդ

նոսա

նոսա յօնան իշխան. և ընդ նմա երկե րիւր և ութսուն հազար: 16 *Եւ ընդ նմա ամասէաս. որդի զաքարեայ յօժարեալն 'ի Տր̅. և ընդ նմա երկերիւր հազար զօրաւորք ուժով: 17 *Եւ 'ի բե նիամինէ զօրաւոր ուժով. եղիադայ: և ընդ նմա աղեղնաւորք և ասպա րաւորք երկերիւր հազար: 18 *Եւ ընդ նմա յովզաբադ. և ընդ նմա հարիւր և ութսուն հազար զօրաւորք 'ի պա տերազմի: 19 *Սոքա էին պաշտօնեայք արքայի. բաց յայնցանէ՝ զորս եդ ար քայ 'ի քաղաքսն ամուրս յամենայն հրէաստանի:

## Գլ: ԺԸ:

1 Եւ եղև յովսափատայ մեծութի. և այլևս փառք բազումք. և արար խնամութի ընդ տանն աքաաբու: 2 *Եւ էջ 'ի կատարել տարւոյն առ աքաաբ 'ի սամարիայ. և եզեն նմա ա քաաբ ոչխարս՝ և զուարակս բազումս. և զօրուն. որ ընդ նմա. և սիրեր զնա ելանել ընդ նմա յռամօթ գաղաա դացւոյն: 3 *Եւ ասէ աքաաբ արքայ Իլի ցյովսափատ արքայ յուդայ. գա ընդ իս յռամօթ գաղաադացւոյն. և ասէ ցնա. որպէս ես՝ նոյնպէս և դու. և որպէս զօրք քո. զօրք իմ ընդ քեզ 'ի պա տերազմին: 4 *Եւ ասէ յովսափատ ցար քայն Իլի՝ խնդրեսցուք այսօր զՏր̅: 5 *Եւ ժողովեաց արքայն Իլի զմար գարէսն Իլի. արս չորեքհարիւր. և ասէ ցնոսա. եթէ երթայց յռամօթ գաղաադ 'ի պատերազմ. և կամ եթէ դադարեցից. և ասեն՝ ել. և յաջողես ցէ Ա̅Ծ̅ 'ի ձեռս արքայի: 6 *Եւ ասէ յովսափատ. ոչ դոյ աստ և այլևս մար գարէ Տն̅. և խնդրեսցուք 'ի նմանէ: 7 *Եւ ասէ արքայն Իլի ցյովսափատ. է միւս ևս այր առ 'ի խնդրել զՏր̅ նո վաւ. և ես ատեցի զնա. վասն զի ոչ մարգարէանայ ինձ 'ի բարիս. և զի ամ աւուրք իւր են 'ի չարութե. նա է միքեաս որդի յեմղեայ. և ասէ յովսա փատ. մի խօսեսցի արքայ այդպէս: 8 *Եւ կոչեաց արքայն Իլի ներքինի մի և ասէ. վաղվաղակի ած զմիքեաս որ դի յեմղեայ: 9 *Եւ արքայն Իլի՝ և յովսափատ արքայ յուդայ՝ նստէին իւրաքանչիւրոք յաթոռ իւրում. զգե ցեալ պատմուճանս. և նստէին յընդ արձակ դրանն սամարեայ: և ամենե քեան մարգարէքն առաջի նոցա մար գարէանային: 10 *Եւ արար իւր սեդե կիաս որդի քանանու եղջիւրս երկա թեղէնս՝ և ասէ. այսպէս ասէ Տէր՝ սոքօք հարցես զասորիս մինչև վախ

11 ճանեսցես: *Եւ ամենեքեան մար գարէքն նոյնպէս մարգարէանային՝ և ասէին: Ել յռամօթ գաղաադ. և յաջողեսցիս. և տացէ Տր̅ 'ի ձեռս ար 12 քայի: *Եւ հրեշտակն՝ որ չոգաւ կո չել զմիքեաս. խօսեցաւ ընդ նմա՝ և ասէ. ահա խօսեցան մարգարէքն իբ րև ընդ մի բերան՝ յաղագս արքայի բարիս. եղիցին և քո բանք իբրև զմի 13 նոյ. և խօսեսցիս բարիս: *Եւ ասէ միքեաս. կենդանի է Տր̅՝ զի զորինչ ասասցէ ցիս Ա̅Ծ̅ զայն խօսեցայց:
14 *Եւ եկն առ արքայ. և ասէ ցնա ար քայ. միքեաս՝ եթէ երթայց յռամօթ գաղաադ 'ի պատերազմ: և եթէ դա դարեցից: և ասէ. ել՝ և յաջողեսցի. 15 և տացին 'ի ձեռս ձեր: *Եւ ասէ ցնա արքայ. քանիցս անգամ երդմնեցուցի զքեզ. զի մի այլինչ խօսեսցիս ընդ իս, բայց զճշմարտութին յանուն Տն̅:
16 *Եւ ասէ. տեսի ցրուեալս զԻէլ 'ի լերինս իբրև զոչխարս. որոց ոչ գոյ հո վիւ. և ասէ Տր̅. ոչ գոյ դոցա իշխան. դարձցի իւրաքանչիւրոք 'ի տուն իւր 17 խաղաղութբ: *Եւ ասէ արքայն Իլի ցյովսափատ. ոչ ասացի ցքեզ՝ թէ ոչ մարգարէանայ նա վասն իմ բարիս. 18 այլ չարութի: *Եւ ասէ՝ ոչ այդպէս. լուարուք զբան Տն̅. տեսի զՏէր՝ զի նստէր յաթոռն իւրում. և ամ զօրք երկնից մերձ կային յաջմէ նր̅ և յահե 19 կէ: *Եւ ասէ Տր̅. ո խաբեսցէ զա քաաբ արքայ Իլի. զի ելցէ՝ և անկցի յռամօթ գաղաադու. և ասեն. ոմն 20 այսպէս. և ոմն այնպէս: *Եւ ել հո գի՝ և եկաց առաջի Տն̅՝ և ասէ. ես խա 21 բեցից զնա. և ասէ Տր̅. իւ: *Եւ ասէ՝ ելից, և եղէց հոգի սուտ 'ի բերան ամ մարգարէիցն նորա. և ասէ՝ խաբես ցես՝ և կարասցես. ել՝ և արա այդպէս: 22 *Եւ արդ՝ ահա ետ Տր̅ զհոգի սուտ 'ի բերան մարգարէիցդ քոց այդոցիկ. 23 և Տէր խօսեցաւ վս̅ քո չարիս: *Եւ մատուցեալ սեդեկիաս որդի քանա նու եհար զծնօտն միքեայի. և ասէ ցնա՝ որով ճանապարհաւ էանց ոգի 24 Տն̅ զինև. և խօսեցաւ ընդ քեզ: *Եւ ասէ միքեաս. ահա տեսցես յաւուրն յայնմիկ. յորում մտցես 'ի շտեմարա 25 նէ 'ի շտեմարան թաքչել: *Եւ ասէ արքայն Իլի. առէք զմիքեաս՝ և դար ձուցէք զդա առ սեմէ իշխան քաղա քին՝ և առ յովաս իշխան որդի ար 26 քայի: *Եւ ասասջիք. այսպէս ասէ արքայ. տուք զդա 'ի տուն բանտին. և կերիցէ հաց նեղութե. և ջուր նե 27 ղութե արբցէ. մինչև 'ի դառնալն ի մում խաղաղութբ: *Եւ ասէ միքեաս. եթէ

եթէ դառնալով դարձցիս խաղաղութբ. ոչ խօսեցաւ ընդ իս Տր. լուարուք ժողովուրդք ամենեքեան: * 28 Եւ ել արքայն Իղի. և յովսափատ արքայ յուդայ յռամօթ գաղաադ: * 29 Եւ ասէ արքայն Իղի ցյովսափատ. ծածկեա՛ զիս. և մտից 'ի պատերազմ, և դու զգեցիր զպատմուճանն իմ'. և ծածկեցաւ արքայն Իղի՝ և եմուտ 'ի պատերազմն: * 30 Եւ արքայն ասորւոց պատուէրեաց իշխանաց կառացն՝ որք էին ընդ նմա՝ և ասէ. մի՛ պատերազմիցիք ընդ փոքու՝ և մի՛ ընդ մեծի. բայց ը արքային Իղի միայն: * 31 Եւ եղև՝ իբրև տեսին իշխանք կառացն զյովսափատ. և ասեն նոքա. սա՛ է արքայն իսրայէլի. և շուրջ եղեն զնովաւ պատերազմիլ. և գոչեաց յովսափատ. և Տր ապրեցոյց զնա. և դարձոյց զնս Ած 'ի նմանէ: * 32 Եւ եղև՝ իբրև տեսին իշխանք կառացն՝ թէ ոչ է նա արքայն Իղի. դարձան 'ի նմանէ: * 33 Եւ այր ոմն ելից զաղեղն կորովութբ. և եհար զարքայն Իղի ընդ մէջ թոքոցն, և լանջաց: և ասէ ցներքինին. դարձո՛ զձեռն քո՝ և հա՛ն զիս 'ի պատերազմէս. վասն զի վտանկեցայ: * 34 Եւ պարտեցաւ պատերազմն յաւուր յայնմիկ. և արքայն Իղի կայր 'ի վերայ կառացն իւրոյ մինչև յերեկոյ ընդդէմ ասորեացն. և մեռաւ 'ի մտանել արեգական:

## Գլ: ԺԹ:

1 Եւ դարձաւ յովսափատ արքայ յուդայ 'ի տուն իւր խաղաղութբ յերուսաղէմ: * 2 Եւ ել ընդառաջ նր յէու որդի անանեայ մարգարէ. և ասէ նա ցարքայ յովսափատ. եթէ մեղաւորին դու օգնես. և կամ ատելւոյն 'ի Տէ բարեկամ լինիս. վասն այդորիկ եղև 'ի վերայ քո բարկութն 'ի Տէ: * 3 Բայց զի գտան 'ի քեզ բանք բարիք. և զի բարձեր զանտառսն յերկրէս յուդայ. և ուղղեցեր զսիրտ քո խնդրել զՏր. ապրեցոյց զքեզ Տր: * 4 Եւ բնակեցաւ յովսափատ յէմ. և միւսանգամ ել ժողովուրդն 'ի բերսաբէէ մինչև 'ի լեառնն եփրեմի. և դարձոյց զնս առ Տր Ած հարցն իւրեանց. * 5 Եւ կացոյց դատաւորս յամենայն քաղաքսն յուդայ՝ և յամուրս իւրաքանչիւր քաղաքի: * 6 Եւ ասէ ցդատաւորս. տեսէ՛ք զինչ առնիցէք դուք. զի զի ոչ զմարդկան իրս դատէք դուք՝ այլ զՏն. և ընդ ձեզ են բանք իրաւանցս: * 7 Եւ արդ եղիցի երկիւղ Տն 'ի վերայ ձեր. պահեցէ՛ք՝ և արարէք. զի ոչ գոյ Տեառն Այ մերոյ անիրաւութի. ‖ և ոչ երեսաց աչառել. և ոչ առնուլ կաշառս: * 8 Բայց և յերուսաղէմ կացոյց յովսափատ 'ի քահանայից՝ և 'ի ղևտացւոց. և 'ի հայրապետաց Իղի՝ յիրաւունս Տն. դատել զբնակիչսն երուսաղէմի: * 9 Եւ պատուէրեաց նոցա՝ և ասէ. այնպէս արարէք երկիւղիւ Տն և ճշմարտութբ. և լի՛ սրտիւ: * 10 Բայր՝ զիրաւունս զեկեալս առ ձեզ յեղբարց ձերոց՝ 'ի բնակչաց քաղաքացն իւրեանց. 'ի մէջ արեան և արեան. և 'ի մէջ իրաց և պատուիրանի. և զիրաւունս և զդատաստանս որոշեցէք նոցա. և մի՛ մեղիցեն առ Ած. և ոչև եղիցի 'ի վերայ ձեր բարկութն. և ոչ 'ի վերայ եղբարց ձերոց. այսպէս արասջի՛ք. և ոչ մեղանչիցէք: * 11 Եւ ահա ամարիաս քահանայ առաջնորդ 'ի վերայ ձեր յամենայն բանի Տն. և զաբդիաս որդի իսմայէլի առաջնորդ 'ի տանն յուդայ՝ յամենայն բանի արքայի. և դպիրքն՝ և ղևտացիք առաջի ձեր. զօրացարո՛ւք՝ և արարէ՛ք. և եղիցի Տր ընդ բարւոյն:

‖ 2. Օրէն. 10.17. Յոբայ. 34. 19. Իմաստ. 6. 8. Սիրաք. 35.16. Գործ. 10.34. Հռոմ. 2.11. Գաղատ. 2. 6. Եփես. 6. 9. Կողոս. 3.25. 1. Պետ. 1.17.

ընդ ձեզ բարեօք

## Գլ: Ի:

1 Եւ յետ այսորիկ եկին որդիքն ամոնայ. և որդիքն մովաբու. և ընդ նոսա 'ի մինեցւոց անտի առ յովսափատ 'ի պատերազմ: * 2 Եկին, և ցուցին յովսափատայ՝ և ասեն. եկն 'ի վր քո ամբոխ բազում. յայնմ կողմանէ ծովուն յասորեաց. և ահա են յասասանթամար. որ է 'ի գադդի: * 3 Եւ երկեաւ. և ետ յովսափատ զերեսս իւր խնդրել զՏէր. և քարոզեաց պահս յամ' յուդայ: * 4 Եւ ժողովեցաւ յուդաս խնդրել զՏր: * 5 Եւ յարեաւ յոսափատ 'ի մէջ եկեղեցւոյն յուդայ յէմ 'ի տանն Տն յանդիման սրահին նորոյ: * 6 Եւ ասէ. Տր Ած հարցն մերոց. ոչ ապաքէն դու ես Ած յերկինս. և դու տիրես ամ թագաւորութեց հեթանոսաց. և 'ի ձեռս քո զօրութն ուժոյ. և ոչ ոք կարէ կալ ընդդէմ քո: * 7 Ո՛չ ապաքէն դու ես Տր. որ սատակեցեր զբնակիչս երկրիս այսորիկ յերեսաց ժողովրդեան քոյ Իղի. և ետուր զսա զաւակի աբրահամու սիրելւոյն քոյ յաւիտեան: * 8 Բնակեցան 'ի սմա. և շինեցին աստ սրբութն անուան քում. և ասացին: * 9 ‖ Եթէ եկեսցեն 'ի վերայ մեր չարիք. սուր. դատաստան. մահ. սով. կացցուք առաջի տանս այսորիկ՝ և առաջի քո. վասն զի անուն քո 'ի վերայ տանս այսորիկ է. և գոչեսցուք առ քեզ 'ի նեղութե. լուիցես՝ և ապրեցուսցես զմեզ:

‖ Վեր. 6. 28.

* ‖ Եւ

12.() 2. 9.

10 *Եւ արդ՝ ահա որդիքն ամոնայ. և մովաբու. և լեառն սէիրայ. ընդ որս ոչ ետուր անցանել Իլի ընդ նոսա՝ յելանել նոցա յերկրէն եգիպտոսի. վն զի խոտորեցան 'ի նոցանէ. և ոչ սատակեցին զնոսա։ 11 *Եւ արդ աւասիկ նոքա յանդգնին գալ 'ի վերայ մեր. և հանել զմեզ յերկրէս ժառանգութե մերոյ. զոր ետուր մեզ։ 12 *Տր Ա.Ծ մեր. ո՞չ առնես դատաստան 'ի նոսա. վն զի ոչ գոյ զօրութի մեր ընդդէմ կալ բազում ամբոխին այնորիկ. և ո՛չ գիտեմք զինչ արասցուք նոցա. այլ առ քեզ են աչք մեր։ 13 *Եւ ամ յուդաս կայր առաջի Տն. և մանկունք նոցա. և կանայք նոցա։ 14 *Եւ ոզիէլ որդի զաքարիայ. յորդւոյն բանեայ. և յորդւոյն եղիելի. որդւոյն մաթանիայ ղևտացւոյ. յորդւոյն ասափայ. և եղև 'ի վերայ նորա հոգի Տն 'ի մէջ եկեղեցւոյն։ 15 *Եւ ասէ. լուարո՛ւք ամ յուդայ՝ և բնակիչք երուսաղէմի՝ և արքայ յոսափատ. այսպէս ասէ Տր ցձեզ. մի՛ երկնչիք. և մի՛ զարհուրիք յերեսաց բազում ամբոխին այնորիկ. վն զի ոչ է ձեր պատերազմն, այլ Ա.Յ։ 16 *Վաղի՛ւ իջէ՛ք 'ի վերայ նց. ահա ելանեն ընդ զառ 'ի վայրն ասերա. և գտջիք զնոսա առ եզեր գետոյն, անապատին յերիէլի։ 17 *Ո՛չ է ձեր պատերազմիլ անդ. իմասջիք՝ և տեսջիք զփրկութի Տն. որ է ընդ ձեզ՝ յուդայ, և եէմ. մի՛ երկնչիք. և մի՛ զարհուրիք վաղի՛ւ ելանել ընդ առաջ նոցա. զի Տր է ընդ ձեզ։ 18 *Եւ խոնարհեալ յոսափատ 'ի վերայ երեսաց իւրոց. և ամ յուդաս՝ և բնակիչք երուսաղէմի. անկան առաջի Տն. և երկիրպագին Տն։ 19 *Եւ յարեան ղևտացիքն՝ յորդւոցն կահաթու. և յորդւոցն կորխայ՝ օրհնել զՏր Ա.Ծ ձայնի՛ւ մեծաւ 'ի բարձունս։ 20 *Եւ կանխեցին ընդ առաւօտս. ելին յանապատն թեկուհայ. և յելանելն իւրեանց եկաց յոսափատ. գոչեաց՝ և ասէ. լուարո՛ւք ինձ յուդաս. և բնակիչք եէմի. հաւատացէք Տն այ մերում. հաւատասցէ և ձեզ. հաւատացէք մարգարէից նր. և յաջողեսցի ձեզ։ 21 *Եւ խորհեցաւ ընդ ժողովրդեանն. և կացոյց սաղմոսանուագս՝ և օրհնիչս, խոստովան լինիլ՝ և օրհնել զսրբութիւն յելանել առաջի զօրուն՝ և ասէին. Խոստովան լերո՛ւք Տն. զի յաւիտեան է ողորմութի նր։ 22 *Եւ եղև 'ի սկսանիլն զօրհնութիւն. և զխոստովանութիւն նորա. ետ Տր պատերազմիլ որդւոցն ամոնայ 'ի վերայ մովաբու. և լերինն սէիրայ. որք

Սաղմ. 135.1.

ելեալ էին 'ի վերայ յուդայ. և պարտեցան։ 23 *Եւ յարեան որդիքն ամոնայ և մովաբու 'ի վերայ բնակչաց լերինն սէիրայ սատակել՝ և խորտակել. և իբրև վախճանեցին զբնակիչս սէիրայ. յարեան 'ի վերայ միմեանց սատակել։ 24 *Եւ յուդաս եկն 'ի դիտանոց անապատին. հայեցաւ՝ և ետես զբազմութին. և ահա ամենեքեան մեռեալք՝ և անկեալք 'ի վերայ երկրի. և ոչ ոք էր ապրեալ։ 25 *Եւ եկն յոսափատ՝ և զօրն՝ կողոպտել զաւարն նոցա. և գտին անասուն բազում. և զկազմածն. և զաւարն. և անօթս ցանկալիս. և աւարեցին զայն. և եղև զերիս աւուրս ժողովել նոցա զաւարն. վասն զի բազում էր յոյժ։ 26 *Եւ յաւուրն չորրորդի ժողովեցան 'ի հովիտն օրհնութե. վասն զի անդ օրհնեցին զՏր. յաղագս այնորիկ կոչեցին զանուն տեղւոյն այնորիկ՝ հովիտ օրհնութե մինչև յօրս յայս։ 27 *Եւ դարձաւ ամենայն այր յուդայ յերուսաղէմ. և յոսափատ առաջնորդ նոցա. ուրախութբ մեծաւ. քանզի ուրախարար զնոսա Տր 'ի թշնամեացն իւրեանց։ 28 *Եւ մտին յերուսաղէմ՝ քնարօք՝ և տաւղօք՝ և փողովք 'ի տուն Տն։ 29 *Եւ եղէն արհաւիրք 'ի Տէ 'ի վր ամենայն թագաւորութեց երկրի. 'ի լսելն նոցա՝ եթէ Տէր ետ պատերազմ ընդ հակառակորդսն Իլի։ 30 *Եւ խաղաղացաւ թագաւորութին յոսափատու. և հանգոյց զնա Ա.Ծ նորա շուրջանակի։ 31 *Եւ թագաւորեաց յոսափատ 'ի վերայ յուդայ. էր ամաց երեսնից և հնգից 'ի թագաւորելն իւրում. և քսան և հինգ ամ թագաւորեաց յերուսաղէմ. և անուն մօրն նորա ազուբա դուստր սաղիայ։ 32 *Եւ գնաց 'ի ճանապարհս հօրն իւրոյ ասայի. ո՛չ խոտորեցաւ առնել ուղղութի առաջի Տն։ 33 *Բայց բարձունքն տակաւին կային. և ժողովուրդն ո՛չ ուղղեաց զսիրտ իւր առ Տր Ա.Ծ հարցն իւրց։ 34 *Եւ մնացեալ բանքն յոսափատու առաջինք և վերջինք՝ ահա գրեալ են 'ի բանս յէուայ որդւոյ անանեայ. որ գրեաց զգիրս թագաւորացն Իլի։ 35 *Եւ յետ այսորիկ հաղորդութի արար յոսափատ արքայ յուդայ ընդ ոքոզիայ արքայի Իլի. և անօրինեցաւ նա առնել։ 36 *Եւ երթալ առ նա՝ և առնել նաւ գնալ 'ի թարսիս. և արար նաւ 'ի գասիոնգաբեր։ 37 *Եւ մարգարեացաւ եղիազար. որդի օդիայ 'ի մարեսայ առ յոսափատ. և ասէ. վասն զի եղեր սի_

սիրելի Ոքոզիայ, խորտակեաց Տէր զգործն քո. և խորտակեցաւ նաւքն. և ոչ կարաց երթալ՚ի Թարսիս:

## ԳԼ. ԻԱ.

3 Թագ. 22.51.

1 Եւ ննջեաց Յովսափատ ընդ հարս իւր. և թաղեցաւ ընդ հարս իւր՚ի քաղաքի դաւթի. և թագաւորեաց Յորամ որդի նորա փոխանակ նորա: 2 *Եւ նորա էին եղբարք՝ որդիք Յովսափատու. վեց. եզրիաս. և եէլ. և զաքարիաս. և միսայէլ՝ և սափատիաս. և ազարիու. ամենեքեան սոքա որդիք Յովսափատու արքայի Յուդայ: 3 *Եւ ետ նոցա հայրն իւրեանց պարգևս բազումս. արծաթ. և ոսկի. և զէնս. հանդերձ պարսպաւոր քաղաքօքն Յուդայ. և զթագաւորութիւնն ետ Յորամայ. վասն զի նա էր անդրանիկ: 4 *Եւ յարեաւ Յորամ՚ի թագաւորութեան իւրում. և զօրացաւ. և սպան զամենեսեան զեղբարսն իւր սրով՝ և յիշխանացն Իղի:

4 Թագ. 8.16.

5 *Որ էինքն երեսուն և երկուց ամաց՝ յորժամ եկաց՚ի թագաւորութեան իւրում. և ութ ամ թագաւորեաց յԵմ: 6 *Եւ գնաց՚ի ճանապարհս թագաւորացն Իղի. որպէս արար տունն Աքաաբու. վասն զի դուստր Աքաաբու էր նորա կին. և արար չար առաջի Տն: 7 *Եւ ոչ կամեցաւ Տր սատակել զտունն դաւթի. վասն ուխտին զոր եդ ընդ դաւթի. և որպէս ասաց տալ նմա ճրագ. և որդւոցն նր զամ աւուրս:

2 Թագ. 7.12.

8 *Յաւուրսն յայնոսիկ ապստամբեցաւ Եդոմ՚ի Յուդայէ. և թագաւորեցուցին՚ի վր իւրեանց թագաւոր: 9 *Եւ գնաց Յովրամ հանդերձ իշխանօքն. և ամ երիվարք ընդ նմա. և եղև՚ի յառնելն նորա գիշերի. եհար Եդոմ զայնոսիկ. որք պատեցին զնա՝ և զիշխանս կառացն: (և փախեաւ զօրն՚ի բնակութիւն իւրեանց:) 10 *Եւ՚ի բաց եկաց Եդոմ՚ի ձեռանէ Յուդայ մինչև յօրս յայս: յայնժամ ապստամբեցաւ Ղոբնա՚ի ձեռանէ նր՚ի ժամանակին յայնմ. վն զի թողին զՏր Ած հարցն իւրեանց: 11 *Քանզի արար իւր բարձունս՚ի քաղաքսն Յուդայ. և պոռնկեցոյց զբնակիչսն Եմի: և մոլորեցոյց զՅուդաս: 12 *Եւ եկն նմա գիր յԵղիայէ մարգարէէ. և ասէ: այսպէս ասէ Տր Ած դաւթի հօր քո: փոխանակ զի ոչ գնացեր դու՚ի ճանապարհս Յովսափատայ հօր քո. և ոչ՚ի ճանապարհս Ասայի արքայի Յուդայ: 13 *Այլ գնացեր՚ի ճանապարհս թագաւորին Իղի: և պոռնկեցուցեր զՅուդաս՝ և զբնակիչս Եմի. որպէս պոռնկեցաւ տունն Աքայաբու: և զեղբարս քո՝ զորդիս հօր քո՝ զլաւագոյնս քան զքեզ սպաներ: 14 *Ահա Տր հարցէ զքեզ հարուածով մեծաւ՚ի ժողովրդեան քում. և զորդիս քո. և զկանայս քո. և զամ ստացուածս քո: 15 *Եւ դու չար հիւանդութեամբ և ախտիւ որովայնի հաշեսցիս. մինչև ելցէ որովայն քո հիւանդութեամբն հանդերձ աւուրց յաւուրս: 16 *Եւ յարոյց Տր՚ի վերայ Յովրամայ զայլազգիս. և զարաբացիս. և զմերձաւորսն յեթէովպացւոց. 17 *Եւ ելին՚ի վր Յուդայ. և հարստահարէին զնա: և դարձուցին զամ պատրաստութիւն. զոր գտին՚ի տան արքային: և զուստերս նր. և զդստերս նորա. և ոչ մնաց նմա որդի. բայց Ոքոզիաս միայն կրտսերագոյն յորդիս նր: 18 *Եւ յետ այսր ամի՝ եհար զնա Տր ախտիւ որովայնի. որոյ ոչ գոյր բժշկութիւն: 19 *Եւ եղև աւուրց յաւուրս. իբրև եկն ժամանակ աւուրցն նր. յերկուս աւուրս ել որովայն նորա հանդերձ ախտիւն. և մեռաւ՚ի չար հիւանդութեանն յայնմիկ. և ոչ արար ժողովուրդն նմա յուղարկաւորութիւն իբրև զյուղարկաւորութիւն հարցն նր:

յերկուս ամս

20 *Որ ամաց երեսուն և երկուց՝ յորժամ թագաւորեաց: և ութ ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. և մեռաւ ոչ գովութեամբ. և թաղեցաւ՚ի քաղաքին դաւթի, և ոչ՚ի գերեզմանս թագաւորացն:

## ԳԼ. ԻԲ.

4 Թագ. 8.24.

1 Եւ թագաւորեցուցին բնակիչքն Եմի զՈքոզիաս որդի նր զկրտսերագոյնն փոխանակ նորա: վն զի զամենեսեան զերիցագոյնսն կոտորեաց հէնն եկեալ՚ի վերայ նոցա. արաբացիքն. և ամիմազոնեայքն: և թագաւորեաց Ոքոզիաս որդի Յովրամայ արքայի Յուդայ: 2 *Քառասուն և երկուց ամաց էր՝ յորժամ թագաւորեաց Ոքոզիաս. և տարի մի թագաւորեաց յԵմ. և անուն մօր նորա Գոթողիա՝ դուստր Ամբրեայ: 3 *Եւ նա գնաց՚ի ճանապարհս տանն Աքաաբու. վն զի մայրն իւր էր խորհրդակից նմա մեղանչել: 4 *Եւ արար չար առաջի Տն. որպէս արար տունն Աքաաբու. քանզի նոքա էին խորհրդակիցք նմա՝ յետ մեռանելոյ հօրն նորա սատակել զնա: 5 *Ըստ խորհրդոցն նց գնաց նա: և չոգաւ ընդ Յովրամայ որդւոյ Աքաաբու՚ի պատերազմ՚ի վր Ազայելի արքայի Ասորեաց յՌամաթ գաղաադ. և հարին ասպետաւորքն

զՅով_

զյովրամ։ *Եւ դարձաւ յովրամ բժշ-
կել 'ի յեզրայէլ 'ի վիրացն. զոր խոցե-
ցին զնա ասորիքն յռամաթ' 'ի պա-
տերազմին նորա ընդ ազայէլի ար-
քայի ասորւոց. և ոքոզիաս որդի յով-
րամայ արքայի յուդայ' էջ տեսանել 6
զյովրամ որդին աքաաբու յեզրայէլ՝
վասն զի հիւանդ էր։ *Եւ 'ի Տէ եղև 7
կործանումն ոքոզիայ յերթալն առ
յովրամ։ և յերթալն նր էլ նա առ
յէու որդին ամեսսեայ առ օծեալն
Տն ։ *Եւ եղև իբրև էառ յէու ըզ 8
վրէժ տանն աքաաբու. եգիտ և զիշ-
խանսն յուդայ՝ զեղբարսն ոքոզիայ.
որք պաշտէին զոքոզիաս. և կոտորեաց
զնոսա։ *Եւ ասաց խնդրել զոքոզիաս. 9
և կալան զնա 'ի բժշկելն 'ի սամարիայ։
և ածին զնա առ յէու. և սպան զնա ։
և թաղեցին զնա անդէն. վասն զի
ասացին. որդի է յոսափատայ. որ խնդ-
րեաց զՏր 'ի բոլոր սրտէ իւրմէ։ և ոչ
գոյր 'ի տանն ոքոզիայ՝ զօրացուցանել
զիք յաղագս զօրութե թագաւորու-
Դ Թագ. 11.1. թեն։ *Եւ գոթողիա մայրն ոքո- 10
զիայ ետես թէ մեռաւ որդին նր. յա-
րեաւ՝ և կորոյս զամ զաւակ թագաւ-
որութեն 'ի տանն յուդայ։ *Եւ էառ 11
յոսաբեթ դուստր արքայի զյովաս
որդի ոքոզիայ. և գողացաւ զնա 'ի մի-
ջոյ որդւոյն արքայի կոտորեցելոցն ։
և եդ զնա՝ և զդայեակն նորա 'ի սե-
նեակս անկողնոցն. և թաքոյց զնա յո-
սաբեթ դուստր արքային յովրամայ՝
[illegible] եղբօրն ոքոզիայ , կին յովիդայեայ
[illegible] քահանայի. և ծածկեաց զնա յերե-
սաց գոթողիայ. և ոչ սպան զնա ։
* Եւ էր ընդ նմա թաքուցեալ 'ի 12
տանն Տն ամս վեց ։ և գոթողիա թա-
գաւորեաց 'ի վերայ երկրին ։

## Գլ. ԻԳ.

Դ Թագ. 11.4. Եւ յամին եօթներորդի զօրացաւ 1
յովիադաէ առ զհարիւրապետսն։
զազարիաս որդի յովրամայ . և զիս-
մայէլ որդի յովնանայ . և զազարիաս
որդի յովբադայ . և զմաասիաս որդի
ադայեայ . և զելիսափատ . որդի զա-
քարիայ 'ի ուխտն Տն ։ *Շրջեցան ընդ 2
յուդաս . և ժողովեցին զղևտացիսն
յամ քաղաքացն յուդայ . և զիշխանս
տոհմիցն իղի . և եկին յեմ ։ *Եւ 3
եդին ուխտ ընդ ամ եկեղեցին յուդայ 'ի
տանն Այ . և ընդ արքային ։ և եցոյց
նոցա զորդին արքայի . և ասէ ցնոսա .
ահաւասիկ որդի արքային յուդայ .
թագաւորեսցէ դա . որպէս խօսեցաւ
Տր 'ի վերայ տանն դաւթի ։ *Եւ արդ 4
բանս այս է . զոր առնիցէք ։ երրորդ-
ձա

մասն 'ի ձէնջ մտցէ 'ի շաբաթապահ
քահանայիցն և ղևտացւոցն 'ի մուտս
5 դրանցն ։ *Եւ երրորդ մասն 'ի տան
արքային ։ և երրորդն 'ի դրանն միջ-
նում. և ամ ժողովուրդն 'ի սրահի
6 տանն Տն լիցի ։ *Եւ մի ոք մտցէ 'ի
տունն Տն . բայց միայն քահանայքն և
ղևտացիք' և պաշտօնեայքն 'ի ղևտա
ցւոցն . նոքա մտցեն . վասնզի որբ են։
և ամ ժողովուրդն պահեսցէ զպահ-
7 պանութիս Տն ։ *Եւ պատեսցեն ղև
տացիքն շուրջանակի զարքայ . այր , և
զէն իւր 'ի ձեռին իւրում։ և որ ոք մտա
նիցէ 'ի տունն, մեռցի. և նոքա եղիցին
ընդ արքայի 'ի մտանել և յելանել նր ։
8 *Եւ արարին ղևտացիքն՝ և ամենայն
յուդաս՝ ըստ ամի զորինչ պատուի-
րեաց յովիադա քահանայ ։ և էառ
իւրաքանչիւր ոք զըմկեր իւր 'ի սկսա-
նելոյ շաբաթուն. վասն զի ոչ արձա-
կեաց յովիադա զհանապազորդեան
9 պահապանսն ։ *Եւ ետ նց զասուսերսն.
և զվահանսն . և զզէնսն . որք էին ար
10 քայի դաւթի 'ի տանն Այ ։ *Եւ կա
ցոյց զամ ժողովուրդն զիւրաքանչիւր
ոք զինուն իւրով՝ յուսոյ տանն յաջմէ.
մինչև յուս ահեկի կողման սեղանոյն
և տաճարին՝ զթագաւորաւն շուրջա-
11 նակի ։ *Եւ եհան զորդի արքային .
և եդ 'ի վերայ նորա զթագն . և զվկայ
ութիւն ։ և թագաւորեցուցին . և
օծին զնա յովիադա և որդիքն իւր .
12 և ասեն . կեցցէ արքայ ։ *Եւ լուաւ
գոթողիա զձայն ժողովրդեանն զըն
թանալոյն՝ զգոհանալոյն՝ և օրհնե-
լոյն զարքայն ։ և եմուտ առ արքայն 'ի
13 տունն Տն ։ *Եւ ետես . և ահա թագաւ
որն կայր 'ի տեղւոջն իւրում . և 'ի
մուտս ճանապարհին՝ պետքն՝ և փողքն՝
և իշխանքն շուրջ զարքայիւ ։ և ամ
ժողովուրդն զուարճացեալ հարկա-
նէին զփողսն . և երգէին նուագարա-
նօքն զերգս . և օրհնէին զօրհնութիւն .
և պատառեաց գոթողիա զզգեստն
իւր . գոչեաց՝ և ասէ . դաւաճանու-
14 թիւք խարդախեցիք ։ *Եւ ել յո-
վիադա քահանայ . և պատուիրեաց
(յովիադա քահանայ) հարիւրապե-
տացն և իշխանացն զօրուն . և ասէ
ցնս . հանէք զդա արտաքս 'ի տանէդ ։
և ելէք զկնի դորա . և մեռցի սրով ։
վասն զի ասաց քահանայն . մի մեռցի
15 նա 'ի տանն Տն ։ *Եւ թոյլ ետուն նմա.
և էանց ընդ դուռն հեծելոց տան ար
16 քային . և սպանին զնա անդ ։ *Եւ
ուխտեաց յովիադա ուխտ 'ի մէջ իւր
և ժողովրդեանն . և արքային . լինել
17 ժողովուրդ Տն ։ *Եւ եմուտ ամ ժո

զօրուրդ երկրին 'ի տունն բահաղու. և կործանեցին զնա. և զսեղանս նր. և զկուռս նր մանրեցին. և զմատթան զքուրմն բահաղու սպանին առաջի սեղանոյ նորին: 18 *Եւ ետ յովիադա քահանայ զգործ տանն 'ի ձեռս քահանայից, և ղևտացւոց. և կանգնեաց զհանապազորդեանն պաշտօնեայս. զքահանայս և զղևտացիս. զորս զատոյց դաւիթ 'ի տունն Տն. և մատոյց ողջակէզս Տն. որպէս և գրեալ է յօրէնսն մովսէսի. ուրախութբ և երգովք 'ի ձեռն դաւթի: 19 *Եւ կացին դռնապանքն 'ի դրունս տանն Տն. և ոչ մտանէր անմաքուր ոք անդր յամ իրս: 20 *Եւ ետ զպետս տոհմիցն. և զզօրաւորսն. և զիշխանս ժողովրդեանն. և զամ ժողովուրդ երկրին. և հանին զարքայ 'ի տունն Տեառն. և մտին ընդ դուռն ներքին 'ի տունն թագաւորին. և նստուցին զարքայ յաթոռ թագաւորութեն: 21 *Եւ ուրախ եղև ամենայն ժողովուրդ երկրին. և քաղաքն լռեաց: և զգոթողիա սպանին սրով:

## ԳԼ: ԻԴ:

4 Թագ. 11. 21. և 12. 1.

1 Ապա ևօթն ամաց յովաս 'ի թագաւորելն իւրում. և քառասուն ամ թագաւորեաց յեմ. անուն մօր նորա սաբիա 'ի բերսաբէէ: 2 *Եւ արար յովաս ուղղութի առաջի Տն զամ աւուրս յովիդայեայ քահանայի: 3 *Եւ էառ իւր յովաս երկուս կանայս. և ծնաւ ուստերս և դստերս: 4 *Եւ յետ այսորիկ եղև 'ի սրտին յովասու կազմել զտունն Տն: 5 *Եւ ժողովեաց զքահանայսն և զղևտացիսն. և ասէ ցնոսա ելէք 'ի քաղաքս յուդայ. և ժողովեցէք յամ յիէ արծաթ զօրացուցանել զտունն Տն ամի ամի. և փութացարուք խօսիլ. և ոչ հաւատացին ղևտացիքն: 6 *Եւ կոչեաց յովաս արքայ զյովիադայ զիշխանն. և ասէ ցնա. ընդէր ոչ արարեր այց ղևտացւոյն բերել 'ի ներքս 'ի յուդայէ և յերուսաղէմէ. որինչ սահմանեալ էր 'ի մովսիսէ յառնէն Այ: վասն զի եկեղեցացւոյց զի էր 'ի խորանն վկայութե: 7 *Զի գոթողիա էր անօրէն. և որդիքն նորա' կործանեցին զտունն այ. քանզի և զսրբութիս տանն Տն արարին բահաղիմայցն: 8 *Եւ ասէ արքայ. լիցի արկղ. և դիցի 'ի դրան տանն Տն արտաքոյ: 9 *Եւ քարոզեսցեն 'ի յուդայ և յեմ բերել Տն. || ոմ տասցն մովսէս ծառայն Տն Այ իէի յանապատին:

|| Ելից. 30. 12.

10 *Եւ ետուն ամենեքեան իշխանքն և ամ ժողովուրդն. և բերէին 'ի ներքս. և արկանէին յարկղն. մինչև լցաւ: 11 *Եւ լինէր իբրև բերէին զարկղն առ վերակացուս արքային. 'ի ձեռն ղևտացւոցն. իբրև տեսանէին' թէ առաւելույր արծաթն, գայր դպրապետն առ արքայ, և վերակացու մեծի քահանային. և թափէին զարկղն. և կացուցանէին անդրէն 'ի տեղւոջն իւրում. այնպէս առնէին օրըստօրէ' և ժողովեցին արծաթ բազում: 12 *Եւ ետ զայն արքայ և յովիադա քահանայ ցայնոսիկ. որք առնէին զգործն 'ի պատրաստութի տանն Տն. և կացուցին 'ի վարձու քարահատս, և հիւսունս կազմել զտունն Տն, և առնէին զգործն: 13 *Եւ ելանէր յաջողութի գործոյն 'ի ձեռս նց. և կանգնեցին զտունն Տն 'ի կայանին իւրում. և զօրացուցին զնա: 14 *Եւ իբրև կատարեցին, բերին առ արքայ. և առ յովիադա զմնացեալ արծաթն. և արարին սպաս 'ի տանն Տն. կահ պաշտաման ողջակիզացն. և խնկարանս ոսկեղէնս և արծաթեղէնս. և մատուցանէին ողջակէզս 'ի տանն Տն հանապազ զամ աւուրս յովիդայեայ: 15 *Եւ ծերացաւ յովիադա լի աւուրբք և վախճանեցաւ ամաց հարիւր և երեսնից: 16 *Եւ 'ի վախճանիլն նր թաղեցին զնա 'ի քաղաքին դաւթի ընդ թագաւորսն. վասն զի արար բարութիս ընդ իէլի' և ընդ Այ' և ընդ տանն նորա: 17 *Եւ եղև յետ վախճանելոյն յովիդայեայ. մտին իշխանքն յուդայ. և երկիր պագին արքայի. և շողոքեցին զմիտսն յովասու. յայնժամ լուաւ նց արքայ: 18 *Թողին զՏր Այ հարցն իւրեանց. և ծառայեցին կռոց և անտառացն. և եղև բարկութի Տն 'ի վր յուդայ և երուսաղէմի յաւուրսն յայնոսիկ: 19 *Եւ առաքեաց առ նս մարգարէս դարձուցանել առ Տր, և ոչ լուան. և եդ նոցա վկայութի, և ոչ անսացին: 20 *Եւ հոգի Տն զգեցաւ ազարիաս որդի յովիդայեայ քահանայի. յարեաւ 'ի մէջ ամ ժողովրդեանն. և ասէ. այսպէս ասէ Տր. ընդէր խոտորեցայք 'ի պատուիրանաց Տն. և ոչ յաջողեսցի ձեզ. վն զի թողիք դուք զՏր. և նա լքցէ զձեզ: 21 *Եւ յարեան 'ի վերայ նորա. և քարկոծեցին զնա պատուիրանաւ յովասու արքայի 'ի սրահի տանն Տն: 22 *Եւ ոչ յիշեաց յովաս զգութն' զոր արար ընդ նմա յովիադա հայրն նր. || այլ սպան զորդին նր. և եղև 'ի մեռանելն. ասաց' տեսցէ Տր. և դատեսցէ: 23 *Եւ 'ի կատարել տարւոյն այնորիկ. ել 'ի վերայ նց զօրն

|| Մատ. 23. 35.

զօրն ասորեաց. և եկն 'ի վերայ յու-
դայ և երուսաղէմի. և կոտորեցին
զամենայն իշխանս ժողովրդեանն և
զօրուն. և զամ աւար նոցա եառուն
տանել արքային դամասկոսի: *Վասն 24
զի սակաւ արամբք եկն զօրն ասո-
րեաց. և Ած մատնեաց 'ի ձեռս նց
զօր բազում յոյժ. վասն թողլոյն նց
զՏէր Ած հարցն իւրեանց: և ընդ
յովասայ արար զդատաստանն:
*Եւ յետ գնալոյն նոցա 'ի նմանէ. թո- 25
ղին զնա 'ի հիւանդութեան մեծի. և յա-
րեան 'ի վերայ նորա ծառայքն իւր.
վասն արեան որդւոյն յովիդայեայ քա-
հանայի. և սպանին զնա 'ի գահոյսն
իւրում, և մեռաւ. և թաղեցին զնա
'ի քաղաքին դաւթի. և ոչ թաղեցին
զնա 'ի գերեզմանսն թագաւորացն:
*Եւ որք յարեանն 'ի վր նորա. էին 26
զաբդեա որդի սամեթայ ամոնացի՝
և յովզաբեդ որդի սամարիթայ մովա-
բացի: *Եւ որդիքն նորա ամենեքեան 27
եկին առ նա հնգեքեան. և բազում
մթերս 'ի վերայ դնէին. և մնացեալ
բանքն յովասու. ահա գրեալ են 'ի գիրս
թագաւորացն: և թագաւորեաց ա-
մասիաս որդի նորա փոխանակ նր:

## Գլ. ԻԵ.

4 Թագ. 14.2.

Որ ամաց քսան և հնգից 'ի թագա- 1
ւորելն ամասիաս. և քսան և ինն
ամ թագաւորեաց յերուսաղէմ: և ա-
նուն մօր նր յովադին յերուսաղեմէ:
*Եւ արար ուղղութիւն առաջի Տն. 2
բայց ոչ լի սրտիւ: *Եւ եղև իբրև 3
հաստատեցաւ թագաւորութիւնն 'ի
ձեռին նր. սպան զծառայսն իւր՝ որք
սպանին զարքայ զհայրն նր: *Եւ զոր- 4
դիսն նոցա ոչ սպան՝ ըստ ուխտի օրի-
նացն Տն. որպէս և գրեալ է. և զոր
օրինակ պատուիրեաց Տր՝ և ասաց.
Ոչ մեռցին հարք փոխանակ որդւոց.
և որդիք ոչ մեռցին փոխանակ հարց
իւրեանց. այլ իւրաքանչիւրոք 'ի մեղս
իւրում մեռցի: *Եւ ժողովեաց ա- 5
մասիաս զտունն յուդայ. և կացոյց
նոցա ըստ տանց տոհմից իւրեանց, հա-
զարապետս. և հարիւրապետս. յամե-
նայն յուդայ և յերուսաղէմ. և թուե-
աց զնոսա 'ի քսանամենից և 'ի վեր.
և եգիտ զնոսա երեքհարիւր հազար
զօրաւորս. որք ելանէին 'ի պատե-
րազմ, ունելով զնիզակ և զասպար:
*Եւ 'ի վարձու կալաւ յիէ հարիւր 6
հազար զօրաւորս ուժով. հարիւր
տաղանդոյ արծաթոյ: *Եւ այր մն 7
Այ եկն առ նա. և ասէ. արքայ՝ մի եր-
թիցէ ընդ քեզ զօրդ իղի. վասն զի

2 Օրէ. 24.16.
4 Թագ. 14.6.
Եզեկ. 18.20.

ոչէ Տր ընդ իղի. և ոչ ընդ ամենայն
8 որդիս եփրեմի: *Եւ եթէ կարծես
ցես զօրանալ դոքօք, 'ի պարտութի
մատնեսցէ զքեզ Տր առաջի թշնա-
մեաց քոց. քանզի 'ի Տէ լինի զօրա-
9 նալ՝ և 'ի պարտութի մատնել: *Եւ ասէ
ամասիաս ցայրն Այ. և զինչ արարից
զհարիւր տաղանդսն. զոր ետու զօ-
րուդ իղի. և ասէ ցնա այրն Այ. գոյ
Տն տալ քեզ առաւելագոյն քան զայն:
10 *Եւ որոշեաց ամասիաս զգունդն. որ
եկեալ էր առ նա յեփրեմայ երթալ 'ի
տեղի իւրեանց. և բարկացան յոյժ 'ի
վերայ յուդայ. և դարձան 'ի տեղիս
11 իւրեանց բարկութբ և ցասմամբ: *Եւ
ամասիաս զօրացաւ. և էառ զզօրն
իւր. և գնաց 'ի հովիտն աղտից. և
եհար անդ զորդիսն սէիրայ տասնհա-
12 զար: *Եւ այլ ևս տասնհազար գե-
րեցին որդիքն յուդայ. և ածէին զնո-
սա 'ի գլուխ քարանձաւին. և գա-
հավէժ առնէին զնս 'ի ծայրից բար-
ձաւանդակին. և ամենեքեան սատա-
13 կէին: *Եւ որդիք զօրութե. զորս
դարձոյց ամասիաս ոչ երթալ ընդ
իւր 'ի պատերազմ, յարձակեցան 'ի
քաղաքսն յուդայ. 'ի սամարիայ մինչև
ցբեթորոն. և հարին 'ի նոցանէ երիս
14 հազարս. և առին աւար բազում: *Եւ
եղև յետ գալոյն ամասիայ 'ի հարկանե-
լոյն զեդոմ, եբեր առ նս զաստուածս
որդւոցն սէիրայ. և կացոյց զնոսա իւր
յաստուածս. և երկիր պագանէր ա-
15 ռաջի նոցա. և զոհէր ինքն նց: *Եւ
եղև բարկութի Տն 'ի վերայ ամա-
սիայ. առաքեաց առ նա մարգարէ՝
և ասէ ցնա. ընդէր խնդրեցեր դու աս-
տուածս ժողովրդեանն այնորիկ. որք
ոչ փրկեցին զժողովուրդն իւրեանց 'ի
16 ձեռաց քոց: *Եւ 'ի խօսելն նորա՝ ասէ
ցնա. միթէ խորհրդակից թագաւորի
եդին զքեզ. զգո՛յշ լեր. գուցէ տան-
ջեսցիս. և լռեաց մարգարէն. և ասէ՝
գիտեմ, զի խորհի Տր 'ի վերայ քո եղ-
ծանել զքեզ՝ վասն զի արարեր զայդ.
17 և չանսացեր խրատու իմում: *Եւ
խորհեցաւ ամասիաս. և առաքեաց առ
յովաս որդի յովաքազայ, որդւոյ
յէուայ. առ արքայն իղի. և ասէ. եկ
18 և երևեսցուք երեսօք: *Եւ առա-
քեաց յովաս արքայ իղի. առ ամա-
սիաս արքայ յուդայ. և ասէ՝ ուզոզն,
որ 'ի լիբանանն է. յղեաց առ մայրն
լիբանանու՝ և ասէ. տուր զդուստր քո
ուստեր իմում 'ի կնութն. և ահա ան-
ցին գազանք անապատին լիբանա-
նու. և եկեալ կոխեցին զուզն զեկքանս:
19 *Ահա հարեր զիդումեաս. և հպար-

տացուցանէ զքեզ սիրտ քո ծանրութե՛ն. նիստ այսուհետև 'ի տան քում. և ընդէ՞ր անկանիս դու 'ի չարութի. և սատակիցիս դու, և յուդաս ընդ քեզ: 20 *Եւ ոչ լուաւ ամասիաս. վն զի 'ի Տէ եղև մատնել զնա 'ի ձեռս յովասու. յաղագս խնդրելոյն նորա զաստուածսն եդովմայեցւոց: 21 *Եւ ել յովաս արքայ իէլի՝ և երևեցան միմեանց նա՝ և ամասիաս արքայ յուդայ՝ 'ի բեթսամիւս. որ է յուդայ: 22 *Եւ պարտեցաւ յուդաս առաջի իէլի. և փախեաւ իւրաքանչիւրոք 'ի բնակութի իւր: 23 *Եւ զամասիաս արքայ յուդայ՝ որդի յովասու՝ կալաւ յովաս արքայ իէլի 'ի բեթսամիւս. և տարաւ զնա յերուսաղէմ. և քակեաց 'ի պարսպէն երուսաղէմի. 'ի դրանէն եփրեմի մինչև 'ի դուռն անկեանն՝ երեքհարիւր կանգուն: 24 *Եւ զամ ոսկի և արծաթ. և զամ սպաս. որ գտաւ 'ի տան Տն և առ աբդեդովմայ. և զգանձս տան թագաւորին. և զորդիս խառնակութեացն էառ. և դարձաւ 'ի սամարիայ: 25 *Եւ եկեաց ամասիաս որդի յովասու արքայ յուդայ՝ յետ մեռանելոյն յովասու որդւոյ յովաքազու արքայի իէլի, ամս հնգետասան: 26 *Եւ մնացեալ բանքն ամասիայ առաջինք և վերջինք. ո՞չ ահա գրեալ են 'ի գիրս թագաւորացն յուդայ և իէլի: 27 *Եւ 'ի ժամանակին յորում՝ 'ի բաց եկաց ամասիաս 'ի Տէ. յարեան 'ի վր նր զօրքն յերուսաղէմ. և փախեաւ 'ի ղաքիս. և առաքեցին զկնի նորա 'ի ղաքիս. և սպանին զնա անդ: 28 *Եւ բարձին զնա 'ի վր ձիոց. և թաղեցին զնա ը՟ հարսն իւր 'ի քաղաքին դաւթի:

## ԳԼ: ԻԶ:

4 Թագ 14. 21.

1 Եւ Առ ամ ժողովուրդ երկրին զոզիաս. և էր նա ամաց վեշտասանից. և թագաւորեցուցին զնա փոխանակ հօր իւրոյ ամասիայ: 2 *Նա շինեաց զեղաթ. և նա դարձոյց զնա անդրէն 'ի յուդայ՝ յետ մեռանելոյն արքային ընդ հարս իւր: 3 *Որդի վեշտասանից ամաց թագաւորեաց ոզիաս. և յիսուներկու ամս թագաւորեաց յերուսաղէմ. և անուն մօր նորա եքեղիա՝ յերուսաղէմէ: 4 *Եւ արար ուղղութիւս առաջի Տն. ըստ ամի զոր արար ամասիաս հայր նորա: 5 *Եւ խնդրեաց զՏր յաւուրս զաքարիայ իմաստնոյ երկիւղին Տն. յաւուրս նորա խնդրեաց նա զՏր. և յաջողեաց նմա Տր: 6 *Եւ ել. և պատերազմեցաւ ընդ այլազգիս. և քակեաց զպարիսպն գեթայ. և զպարիսպն յաբնայ. և զպարիսպն ազովտայ. և շինեաց զքաղաքսն ազովտայ 'ի մէջ այլազգեացն: 7 *Եւ զօրացոյց զնա Տր 'ի վերայ այլազգեացն. և 'ի վր արաբացւոցն. որք բնակէին 'ի վի մին. և 'ի վր մինացւոցն: 8 *Եւ տային ամմանացիքն ընծայս ոզիայ. և էր անուն նորա մինչև 'ի մուտս եգիպտոսի. վն զի զօրացաւ 'ի վեր: 9 *Եւ շինեաց ոզիաս զաշտարակսն երուսաղէմի առ դրան ձորոյն. և առ անկիւնսն. և զօրացոյց: 10 *Եւ շինեաց աշտարակս յանապատին. և փորեաց ջրհորս բազումս. վն զի անասուն բազում էր նորա 'ի սեփեղայ՝ և 'ի դաշտին. և այգեգործք 'ի լերինն և 'ի կարմեղոս. քանզի սիրէր զերկրագործութի: 11 *Եւ եղեն ոզիայ զօրք. որք առնէին պատերազմ. և ելանէին 'ի մարտ գնդաւ. և թիւ նոցա 'ի ձեռն յէելի դպրապետի՝ և մաասեայ դատաւորի և 'ի ձեռն անանիայի փոխանակի արքայի: 12 *Ամենայն գունդք ցեղապետացն զօրաւորաց 'ի պատերազմին երկու հազարք և վեցհարիւր: 13 *Եւ ը՟ նոցա զօր պատերազմօղ, երեքհարիւր և եօթն հազար և հինգհարիւր. նոքա էին. որք առնէին պատերազմ զօրութ մեծաւ. օգնական լինելով արքային 'ի հակառակորդայն: 14 *Եւ պատրաստէր նց ոզիաս ամ զօրուն՝ վահանս՝ և նիզակս՝ և սաղաւարտս՝ և զրահս՝ և աղեղունս՝ և պարսս 'ի քարինս: 15 *Եւ արար յերուսաղէմ մեքենայս արուեստից ճարտարութեան՝ լինել 'ի վերայ պարսպաց. և 'ի վերայ անկեանց. ձգել նետս՝ և քարինս մեծամեծս. և լսելի եղև պատրաստութի նորա մինչև 'ի հեռաստանէ. վասն զի սքանչելի էր նա յօգնել մինչև զօրացաւ: 16 *Եւ իբրև զօրացաւ, բարձրացաւ սիրտ նր առ 'ի յապականել. և անիրաւեցաւ 'ի Տր Ած իւր. և եմուտ 'ի տաճարն Տն ծխել խունկս 'ի վր սեղանոյ խնկոցն: 17 *Եւ եմուտ զհետ նր ազարիաս քահանայ. և ը՟ նմա քահանայքն Տն ութսուն. որդիք զօրաւորք: 18 *Կացին 'ի վերայ ոզիայ արքայի. և ասեն ցնա. ոչ է քո ոզիաս ծխել զխունկս Տն. այլ քահանայից՝ որդւոցդ ահարօնի սրբեցելոցդ է ծխել զայդ. ել արտաքս 'ի սրբութենէ. վասն զի ապստամբեցար դու 'ի Տէ. և ոչ եւս լինի քեզ այդ 'ի փառս 'ի Տէ Այ: 19 *Եւ սրտմտեցաւ ոզիաս. և 'ի ձեռին իւրում բուրվառն ծխել զխունկս տաճարին. և բարկանալն նորա քահա-

հանայիցն՝ երեւեցաւ բորոտութիւն ՚ի ճակատն նորա. յանդիման քահանայիցն ՚ի տանն Տն. ՚ի վերայ սեղանոյ խնկոցն։ 20 *Եւ դարձաւ առ նա քահանայն առաջին՝ եւ այլ քահանայքն. եւ ահա բորոտեալ էր ճակատն նորա. եւ դադարեցուցին զնա անտի. քանզի եւ ինքն իսկ փութացաւ ելանել. զի յանդիմանեաց զնա Տր։ 21 *Եւ էր Ոզիաս արքայ բորոտեալ մինչեւ յօր վախճանի իւրոյ. եւ ՚ի տանն ափուսովթ նստէր բորոտեալ. վն զի որոշեցաւ ՚ի տանէն Տն. եւ Յովաթամ որդի նորա էր ՚ի վերայ թագաւորութե նորա՝ դատել զժողովուրդ երկրին։ (‖4 Թագ 15. 5.) 22 *Եւ մնացեալ բանքն Ոզիայ առաջինք եւ վերջինք. գրեալ են յեսայեայ որդւոյ Ամովսայ մարգարէէ։ 23 *Եւ ննջեաց Ոզիա ընդ հարսն իւր. եւ թաղեցին զնա ընդ հարս նորա ՚ի դաշտի. ՚ի գերեզմանի թագաւորացն. վասն զի ասացին եթէ բորոտ է. եւ թագաւորեաց Յովաթամ որդի նորա փոխանակ նորա։

## ԳԼ. ԻԷ.

(‖4 Թագ 15.32.) 1 Որդի ‖քսան եւ հինգ ամաց էր Յովաթամ ՚ի թագաւորելն իւրում. եւ վեշտասան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ անուն մօր նորա յերուսայ դուստր Սադովկայ։ 2 *Եւ արար ուղղութի առաջի Տն ըստ ամենայնի զոր ինչ արար Ոզիաս հայրն նորա. բայց ոչ եմուտ ՚ի տաճարն Տն. եւ տակաւին եւս ժողովուրդն ապականեալ էր։ 3 *Նա շինեաց զդուռնն տան Տն ըղ բարձր. եւ ՚ի պարսպին Ոփղայ շինեաց բազումս։ 4 *Եւ քաղաքս շինեաց ՚ի լեռինն Յուդայ. եւ յանտառս բնակութիւնս, եւ աշտարակս։ 5 *Նա կռուեցաւ ընդ արքային որդւոց Ամոնայ. եւ զօրացաւ ՚ի վերայ նորա. եւ տային նմա որդիքն Ամոնայ ՚ի միում տարւոջ հարիւր տաղանդ արծաթոյ. եւ տասն հազար քոռ ցորենոյ. եւ գարի տասն հազար քոռ. բերէր նմա զայն արքայն Ամոնայ ամ ամի. եւ յառաջնում ամի. եւ յերկրորդումն. եւ յերրորդումն։ 6 *Զօրացաւ Յովաթամ. վասն զի պատրաստեաց զճանապարհս իւր առաջի Տն Այ իւրոյ։ 7 *Եւ մնացեալ բանքն Յովաթամայ. եւ պատերազմն նորա. եւ ճարտարքն իւր. ահա գրեալ են ՚ի գիրս թագաւորացն Յուդայ եւ Իղի։ 8 *Քսան եւ հինգ ամաց էր՝ յորժամ թագաւորեաց. եւ վեշտասան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ։ 9 *Եւ ննջեաց Յովաթամ ընդ հարսն իւր. եւ թաղեցաւ ՚ի քաղաքին Դաւթի. եւ թագաւորեաց Աքազ որդի նորա փոխանակ նորա։

## ԳԼ. ԻԸ.

1 Որդի ‖քսան ամաց էր Աքազ ՚ի թագաւորելն իւրում. եւ վեշտասան ամ թագաւորեաց յԵրուսաղէմ. եւ չարար ուղղութի առաջի Տն իբրեւ զԴաւիթ զհայր իւր։ (‖4 Թագ 16.2.) 2 *Եւ գնաց ըստ ճանապարհաց թագաւորացն Իղի. քանզի արար դրօշեալս։ 3 *Եւ կռոց նոյ զոհէր յերկրին բենէնովմայ. եւ անցուցանէր զորդիսն իւր ընդ հուր. ըստ գարշութե ազգացն զորս սատակեաց Տր յերեսաց որդւոցն Իղի։ 4 *Եւ ծխէր խունկս ՚ի վր բարձանց. եւ ՚ի վերայ տանեաց. եւ ՚ի ներքոյ ամ վարսաւոր ծառոց։ 5 *Եւ մատնեաց զնա Տր Ած նորա ՚ի ձեռս արքային Ասորեաց. եւ եհար զնա. եւ գերեաց ՚ի նոցանէ գերութի բազում. եւ տարաւ ՚ի Դամասկոս. եւ ՚ի ձեռս արքային Իղի մատնեաց զնա. եւ եհար զնա հարուածս մեծամեծս։ 6 *Եւ կոտորեաց Փակէէ որդի Հռոմելայ արքայ Իղի ՚ի Յուդայէ ՚ի միում աւուր հարիւր եւ քսան հազար արանց զօրաւորաց զօրութե ՚ի թողուլն նոցա զՏէր Ած հարցն իւրեանց։ 7 *Եւ սպան Զեքրի զօրաւորն Եփրեմայ՝ զՄաասիաս զորդի արքային. եւ զԵզրիկամ իշխան տան նորա. եւ զԵղկանայ զփոխանորդ արքային։ 8 *Եւ գերեցին որդիքն Իղի յեղբարցն իւրեանց երեքհարիւր հազար կանանց. եւ զուստերս՝ եւ զդստերս. եւ աւար բազում առին ՚ի նոցանէ. եւ տարան զաւարն ՚ի Սամարիա։ 9 *Եւ էր անդ մարգարէ Տն. Ովդեդ անուն նր. ել նա ընդառաջ զօրուն եկելոյ ՚ի Սամարիա. եւ ասէ ցնոսա. ահա բարկութի Տն Ած հարցն ձերոց եղեւ ՚ի վր Յուդայ. եւ մատնեաց զնոսա ՚ի ձեռս ձեր. եւ կոտորեցիք զնոսա բարկութբ՝ 10 եւ մինչեւ յերկինս ժամանեաց։ *Եւ արդ զորդիսդ Յուդայ եւ զԵէմի դուք ասէք ստանալ ՚ի ծառայս եւ յաղախնայս՝ ոչ ապաքէն ուսասիկ եմ ընդ ձեզ. վկայ լինիլ Տն Ած ձերում։ 11 *Եւ արդ՝ լուարուք ինձ. եւ դարձուցէք անդրէն զգերութիւնդ. զոր գերեցիք դուք յեղբարց ձերոց. վասն զի բարկութի սրտմտութե Տն լինի ՚ի վերայ ձեր։ 12 *Եւ յարեան իշխանք որդւոցն Եփրեմի. Ազարիաս որդի Յովնանայ. եւ Բարաքիաս որդի Մոսողամոթայ. եւ Եզեկիաս որդի Եղամայ. եւ Ամասիաս որդի Ադղիայ ՚ի վերայ եկե_

եկելոցն 'ի պատերազմէն: 13 *Եւ ասեն ցնս. մի ածէք զգերութիւնդ զայդ այսր առ մեզ. վս զի մեղանչել մեզ առ Տր դուք ասէք՝ և յաւելուլ 'ի մեղսն մեր և 'ի տգիտութիւնս. քանզի բազում են մեղք ձեր այդուքիկ. և բարկութիւն սրտմտութեան Տն լինի 'ի վերայ Իէլի:
14 *Եւ թողին պատերազմօղքն զգերութիւն՝ և զաւարն առաջի իշխանացն և ամ եկեղեցւոյն: 15 *Եւ յարեան ամ արք. որք կոչեցան յանուանէ. և խնամակալութիւն արարին գերութեանն. զամենեսեան մերկսն զգեցուցին յաւարէն. և ագուցին նոցա կօշիկս. և ետուն ուտել. և օծին իւղով. և առին գրաստուք զամ տկարս. և տարան զնս յերիքով քաղաք արմաւենեաց. առ եղբարսն իւրեանց. և ինքեանք դարձան 'ի սամարիայ: 16 *Ի ժամանակին յայնմիկ առաքեաց աքազ առ արքայն ասորեաց օգնել նմա յայնոսիկ:
17 *Վասն զի եդոմայեցիքն յարձակեցան 'ի վերայ. և հարին զյուդաս. և գերեցին գերութիւնս: 18 *Եւ այլազգիքն դիմեցին 'ի քաղաքս դաշտին. և լիբէացիքն եկին 'ի յուդայ. և առին զբեթսամիւս. և զայեղօն. և զգադերովթ. և զսոկքով՝ և զգեօղս նորա. և զթամնայ՝ և զգեօղս նորա. և զգամզար՝ և զգեօղս նորա. և բնակեցան անդ: 19 *Վս զի նկուն արար Տր զյուդաս, յաղագս աքազու արքայի յուդայ, զի 'ի բաց եկաց ապստամբութբ 'ի Տէ: 20 *Եւ եկն 'ի վերայ նորա թագղաթփաղնասար արքայ ասորեստանեայց. և եհար զնա: 21 *Եւ էառ աքազ զորինչ էր 'ի տանն Տն՝ և 'ի տանն թագաւորին՝ և իշխանացն. և ետ արքային ասորեստանեայց: և ոչ էր օգնականութիւն ինչ նոցա: 22 *Բայց նեղել զնս: և 23 յաւել եւս 'ի բաց կալ 'ի Տէ: *Եւ ասաց արքայն. խնդրեցից զաստուածս դամասկոսի. որք հարին զիս: և ասէ՝ եթէ աստուածք թագաւորին ասորեստանեայց նոքա են զօրաւորք. նոցա այսուհետև զոհեցից. և օգնեսցեն ինձ: և նոքա եղեն նմա խոչ՝ և ամ Իէլի:
24 *Եւ 'ի բաց արար աքազ զսպաս տանն Տեառն. կոտորեաց զայն. և փակեաց զդրունս տանն Տն. և արար իւր սեղանս յամ անկիւնս Եէմի: 25 *Եւ յամ քաղաքսն յուդայ՝ արարին բարձունս ծխել խունկ աստուածոց օտարաց. բարկացուցին զՏր ԱԾ հարցն իւրեանց: 26 *Եւ մնացեալ բանքն նր առաջինք և վերջինք. ահա գրեալ են 'ի գիրս բանից թագաւորացն յուդայ և Իէլի: և ննջեաց աքազ ընդ հարսն իւր. և թաղեցաւ 'ի քաղաքին դաւթի: վասն զի ոչ մուծին զնա 'ի գերեզմանս թագաւորացն: և թագաւորեաց եզեկիաս փոխանակ նորա:

## ԳԼ: ԻԹ.

1 Եւ էր եզեկիաս 'ի թագաւորելն իւրում քսան և հինգ ամաց. և քսան և ինն թագաւորեաց յԵէմ: և անուն մօր նորա աբաութ դուստր 2 զաքարիայ: *Եւ արար ուղղութիւն առաջի Տն. ըստ ամի զորինչ արար 3 դաւիթ հայրն նր: *Եւ եղև իբրև եկաց 'ի թագաւորութեան իւրում, յառաջնում ամսեանն եբաց զդրունս 4 տանն Տն. և կազմեաց զնոսա: *Եւ տարաւ 'ի ներքս զքահանայսն և զղևտացիսն. և կացոյց զնս 'ի կողմն արևե 5 լից: *Եւ ասէ ցնոսա. լուարուք ղևտացիք. այսուհետև սրբեցարուք. և սրբեցէք զտունն Տն ԱԾ հարցն ձե րոյ: և 'ի բաց հանէք զպղծութիւնն 'ի 6 սրբութենէն: *Վասն զի ապստամբե ցան հարքն մեր. և արարին չար առաջի Տն. և թողին զնա. և դարձուցին զե րեսս 'ի խորանէն Տն. և ընդվզեցան: 7 *Եւ փակեցին զդրունս տաճարին. շիջուցին զճրագունս. և խունկս ոչ ծխեցին նմա. և ոչ ողջակէզս մատու 8 ցին սրբոյն ԱԾ Իէլի: *Եւ բարկա ցաւ սրտմտութբ Տր 'ի վր յուդայ և Եէմի: և ետ զնոսա 'ի յիմարութիւն. և յապականութիւն. և 'ի շչիւն. որպէս 9 դուք տեսանէք աչօք ձերովք: *Եւ ահա վիրաւորեցան հարքն մեր սուսե րօք. և ուստերք ձեր՝ և դստերք՝ և կանայք ձեր՝ են 'ի գերութեան. յերկրի 10 ոչ իւրեանց. ուր են ն այժմ: *Եւ այ սուհետև լիցի 'ի սիրտս մեր դնել ուխտ Տն ԱԾ Իէլի. և դարձուսցէ զբարկութիւն սրտմտութեան իւրոյ 'ի մէնջ:
11 *Բայց՝ մի ինչ նուաղիք առնել յայսմ հետէ. վասն զի զձեզ ընտրեաց Տր՝ կալ և պաշտել առաջի իւր. և լինել նմա սպասաւորս. և ծխել խունկս:
12 *Եւ յարեան ղևտացիքն մահեթ՝ որդի ամասիայ՝ և յովէլ՝ որդի զաքարիայ, յորդւոցն կահաթու: և յորդւոցն մերարեայ. կիս՝ որդի աբդիայ. և ազարիաս՝ որդի յեղեղայ: և յորդւոցն 13 գերսոնի: յովա՝ որդի զեմաթայ: և յովադան՝ որդի յովաքայ: *Եւ յորդ ւոյն եղիսափանայ, սամարի. և եիէլ. և յորդւոցն ասափայ՝ զաքարիաս. և 14 մատթանիաս: *Եւ յորդւոցն եմա նայ՝ եիէլ. և սեմէի: և յորդւոց իդի 15 թունայ՝ սամիաս. և ոզիէլ: *Եւ ժո ղովեցին զեղբարսն իւրեանց. և սրբե ցան

4 Թագ. 18. 2.

ցան խնքեանք ըստ պատուիրանի թա
գաւորին․ հրամանաւ Տն սրբել զտ
տունն Տն ։ 16 * Եւ մտին քահանայքն
'ի տունն Տն սրբել զնա ։ և հանին
արտաքս զամ աղտեղութիւն․ որ գտան
'ի տանն Տն և 'ի սրահի տանն Տն ։ և
առին ղևտացիքն հանել զայն 'ի հե_
ղեղատն կեդրոնի արտաքս ։ 17 * Եւ
սկսան յաւուրն առաջնում․ յամսա_
մտի առաջնոյ ամսոյն սրբել զնա․ և
որ օր ութն էր ամսոյն․ մտին 'ի տաճարն
Տն․ և սրբեցին զտունն Տն յաւուրս
ութն ։ և յաւուրն վեշտասաներորդի
ամսոյն առաջնոյ կատարեցին ։ 18 * Եւ
մտին 'ի ներքս առ եզեկիաս արքայ՝ և
ասեն․ սրբեցաք զամ, որինչ էր 'ի
տանն Տն ։ զսեղան ողջակիզացն ։ և
զսպասն նր ։ և զսեղանն զառաջադ_
րութե․ և զսպասն իւր ։ 19 * Եւ զամ
կահն, զոր պղծեաց թագաւորն ա_
քազ յիւրում թագաւորութեն․ և
յապստամբութեն իւրում; պատրաս
տեցաք՝ և սրբեցաք․ և ահա է առաջի
սեղանոյն Տն ։ 20 * Եւ կանխեաց եզե_
կիաս արքայ՝ և ժողովեաց զիշխանս
քաղաքին․ և ել 'ի տունն Տն ։ 21 * Եւ
եհան զուարակս եօթն․ և խոյս եօթն․
և որոջս եօթն․ և նոխազս այծեաց
եօթն․ վասն մեղաց թագաւորութեն․
և վն սրբութեցն և իէլի ։ և ասէ ցոր
դիսն ահարօնի ցքահանայս․ մատե_
րուք առ սեղանն Տն ։ 22 * Եւ զենին
զզուարակսն․ և ընկալան քահանայքն
զարիւնն ։ և հեղին զնա առ սեղանովն․
և զենին զխոյսն․ և հեղին զարիւնն
առ սեղանովն ։ ( և զենին զորոջսն․ և
հեղին զարիւնն առ սեղանովն ։ ) 23 * Եւ
մատուցին զնոխազսն զվն մեղացն․
առաջի արքային և ժողովրդեանն․ և
եդին զձեռս իւրեանց 'ի վերայ նոցա ։
24 * Եւ զենին զնս քահանայքն․ և քաւե
ցին զարիւն նոցա առ սեղանովն․ և ա_
րարին քաւութիւն ամ իէլի․ զի յաղագս
ամ իէլի ասաց թագաւորն զողջա_
կէզսն՝ և զվասն մեղացն առնել ։ 25 * Եւ
կացուցին զղևտացիսն 'ի տանն Տն․
ծնծղայիւք․ և տաւղօք․ և քնարօք․
ըստ պատուիրանին դաւթայ արքայի․
և գադայ տեսանողի թագաւորին․ և
նաթանայ մարգարէի ։ վասնզի պատ
ուիրանաւ Տն էր հրամանն 'ի ձեռն
մարգարէիցն ։ 26 * Եւ կային ղևտացիքն
նուագարանօքն դաւթայ ։ և քահա_
նայքն փողովք ։ 27 * Եւ ասաց եզեկիաս
հանել զողջակէզսն 'ի վերայ սեղա_
նոյն ։ և իբրև սկսան հանել զողջա_
կէզսն․ սկսան երգել Տն փողովքն․ և
նուագարանօք դաւթայ արքայի իէլի ։

28 * Եւ ամ եկեղեցին երկիր պագա_
նէր ։ և սաղմոսանուագքն երգէին․
և հարկանէին զփողսն․ մինչև կատա
րեցան ողջակէզքն ։ 29 * Եւ իբրև կա_
տարեցին մատուցանել․ խոնարհեցաւ
թագաւորն, և ամ քահանայքն, և եր
կիր պագին ։ 30 * Եւ ասաց արքայ եզե_
կիաս․ և իշխանքն ցղևտացիսն օրհ_
նել զՏր․ բանիւքն դաւթի․ և ասա_
փայ մարգարէի ։ և օրհնէին ուրախու
թբ ։ և անկան 'ի վերայ երեսաց․ և
երկիր պագին ։ 31 * Պատասխանի ետ
եզեկիաս՝ և ասէ ։ այժմ լցէք զձեռս
ձեր Տն․ մերձեցարուք այսուհետև,
և բերէք ։ և եբեր եկեղեցին պատա_
րագս օրհնութե 'ի տուն Տն․ և ամ
որ ոք յօժարեալ էր սրտիւ, զողջա_
կէզս ։ 32 * Եւ եղև թիւ ողջակիզին․
զոր մատոյց եկեղեցին․ զուարակք
եօթանասուն․ խոյք հարիւր․ որոջք
երկերիւր․ յողջակէզս Տն ամենեքեան
այնոքիկ ։ 33 * Եւ որք նուիրեցանն․ զուա
րակք վեցհարիւր․ ոչխարք երեք
հազարք ։ 34 * Բայց քահանայքն էին սա
կաւք․ և ոչ կարէին զենուլ զողջա_
կէզսն ։ և օգնէին նոցա եղբարքն իւր
եանց ղևտացիքն․ մինչև կատարեցաւ
գործն․ և մինչև սրբեցան քհանայքն ։
վն զի ղևտացիքն սրբեցան յօժարու
թբ քան զքահանայսն ։ 35 * Եւ ողջա_
կէզքն էին բազումք 'ի ճարպս կա_
տարմանն․ և 'ի փրկութիւնսն․ և 'ի
նուէրս ողջակիզացն ․ և յօրինեցաւ
գործն 'ի տանն Տն ։ 36 * Եւ ուրախ եղև
եզեկիաս․ և ամ ժողովուրդն․ վասն
պատրաստելոյ զսպասն Այ ժողովր
դեանն ։ քանզի յանկարծակի եղև
բանն ։

## ԳԼ: Լ:

1 Եւ առաքեաց եզեկիաս յամ իէլ՝
և յուդայ ։ և գրեաց թուղթս
յեփրեմ, և 'ի մանասէ գալ 'ի տունն
Տն յէհմ․ և առնել զպասեքն Տն Այ
իէլի ։ 2 * Եւ խորհեցաւ արքայ՝ և իշ
խանքն․ և ամ եկեղեցին՝ որ յէհմ․
առնել զպասեքն յամսեանն երկրոր
դի ։ 3 * Վասնզի ոչ կարացին առնել
զնա 'ի ժամանակին յայնմիկ․ զի քա_
հանայքն ոչ սրբեցան բաւական․ և
ժողովուրդն ոչ ժողովեցաւ յէհմ ։
4 * Եւ հաճոյ թուեցաւ բանն առաջի
արքայի՝ և առաջի եկեղեցւոյն ։ 5 * Եւ
հաստատեցին բան․ զի անցցեն քա_
րոզքն ընդ ամ իէլ․ 'ի բերսաբէէ մին
չև 'ի դան․ գալ՝ և առնել զպասեքն
Տն Այ յէհմ․ վասն զի բազմութիւն
ոչ արար ըստ գրոյն ։ 6 * Եւ գնացին
սուր_

սուրհանդակքն հանդերձ թղթովքն
'ի թագաւորէն՝ և յիշխանացն՝ յամ
իէլ և յուդաս․ ըստ հրամանի թա_
գաւորին ։ և ասէին ցորդիսն իէլի․
դարձարուք առ Ած աբրահամու՝ ի_
սահակայ՝ և յակոբու , և դարձցի նա
առ ապրեալսդ և մնացեալսդ 'ի ձե_
ռաց թագաւորին ասորեստանեայց ։
7 * Եւ մի՛ լինիք իբրև զհարսն ձեր․
և զհարսն ձեր․ որք 'ի բաց կացին 'ի
Տէ Այ հարցն իւրեանց․ և մատնեաց
զնս 'ի կործանումն․ որպէս դուք տեսա_
նէք ։ 8 * Եւ արդ՝ մի՛ խստացուցանէք
զպարանոցս ձեր․ տուք փառս Տն Այ․
և մտէք 'ի սրբութիւն նր՝ զոր սրբեաց
յաւիտեան․ և ծառայեցէք Տն Այ
ձերում․ և դարձուսցէ 'ի ձէնջ զբար_
կութիւն սրտմտութեան իւրոյ ։ 9 * Վասնզի
'ի դառնալն ձերում առ Տր․ եղբարք
ձեր՝ և որդիք ձեր եղիցին 'ի գթութիւն
առաջի ամենեցուն գերչացն իւր_
եանց․ և դարձուսցէ զնս յերկիրս յայս․
քանզի ողորմած և գթած է Տր Ած
մեր․ և ոչ դարձուսցէ զերեսս իւր 'ի
մէնջ․ եթէ դառնայցեմք առ նա ։
10 * Եւ սուրհանդակքն երթային 'ի
քաղաք 'ի քաղաքէ․ 'ի լերինս եփրեմի
և մանասէի․ մինչև 'ի զաբուղոն ։ և
լինէր իբրև ծաղր իմն առնել զնոսա՝
և արհամարհել ։ 11 * Բայց արք յասերայ․
և 'ի մանասէէ․ և 'ի զաբուղոնէ․ պատ
կառեցան յերուսաղէմ ։ 12 * Եւ 'ի յու_
դայ եղև ձեռն Տն, տալ նոցա սիրտ՝
գալ և առնել ըստ հրամանի թա_
գաւորին և իշխանացն բանիւ Տն ։
13 * Եւ գումարեցաւ յերուսաղէմ ժո_
ղովուրդ բազում՝ առնել զտօն բա_
ղարջացն յամսեանն երկրորդի․ եկե_
ղեցի բազում յոյժ ։ 14 * Եւ յարեան և
քակեցին զսեղանսն՝ որք էին յերու_
սաղէմ․ և զամ սեղանսն ուր ծխէին
խունկս ստութեանց , կործանեցին՝ և
ընկեցին 'ի հեղեղատն կեդրոնի ։
15 * Եւ զենին զպասեքն՝ որ օր չորեքտա
սան էր ամսեանն երկրորդի․ և քահա
նայքն՝ և ղևտացիք պատկառեցան՝ և
սրբեցան ։ և տարան 'ի ներքս զողջա
կէզսն 'ի տունն Տն ։ 16 * Եւ կային 'ի
կայանին իւրց․ ըստ պատուիրանին մօ
սէսի առնն Այ ։ և քահանայքն ընդ_
ունէին զարիւնն 'ի ձեռաց ղևտաց_
ւոցն ։ 17 * Վասնզի բազումք յեկեղեց
ւոյն ոչ սրբեցան ։ և ղևտացիքն զե_
նուին զպասեքն ամի՝ որ ոչ կարաց սբ
լինիլ Տն ։ 18 * Քանզի յոլովք 'ի ժո_
ղովրդենէն եփրեմի՝ և մանասէի․ և
իսաքարայ՝ և զաբուղոնի՝ ոչ սրբեցան․
այլ կերին զպասեքն արտաքոյ գրոյն ։

պատկա_ ռեցան էին

և յաղօթս եկաց եզեկիաս վասն նց
և ասէ ։ Տր բարերար․ քաւիչ լեր ։
19 * Ամենայն սրտից ուղղոց․ որք խնդ_
րեն զՏր Ած հարցն իւրեանց․ և ոչ
20 են ըստ սրբութեան սրբութեանն ։ * Եւ
լուաւ Տր եզեկիայ՝ և բժշկեաց զժողո
21 վուրդն ։ * Եւ արարին որդիքն իէլ․
որք գտան յէմ, զտօն բաղարջակե
րացն՝ աւուրս եօթն ուրախութը մե
ծաւ․ յաջողելով Տն օրըստօրէ․ և քա
հանայքն՝ և ղևտացիքն նուագարա
22 նօքն Տն ։ * Եւ խօսեցաւ եզեկիաս 'ի
սիրտ ամ ղևտացւոցն՝ և այլոց իմաստ
նոցն՝ որք իմանային զհանճար բարի
Տն ։ և կատարեցին զտօն բաղարջոցն
աւուրս եօթն․ զենլով զզոհս փրկու
թեան․ և խոստովան լինելով Տն Այ
23 հարցն իւրեանց ։ * Եւ խորհեցաւ եկե
ղեցին միանգամայն, առնել և ս աւուրս
եօթն․ և արարին զուրախութիւնն
24 զեօթն և ս օրս ։ * Վասնզի եզեկիաս
սկսաւ տալ 'ի յուդայ յեկեղեցւոյն
զուարակս հազար․ և ոչխարս եօթն
հազար ։ և իշխանքն սկսան տալ ժո_
ղովրդեանն զուարակս հազար․ և
ոչխարս տասն հազար ։ և սրբեցան 'ի
25 քահանայից բազումք յոյժ ։ * Եւ ու_
րախ եղև ամենայն եկեղեցին․ քահա
նայքն՝ և ղևտացիքն․ և ամ ժողով
ուրդն յուդայ․ և որք գտան անդ յիէ
և եկքն, որք եկեալ էին յերկրէն իէլ․
26 և բնակիչքն յուդայ ։ * Եւ եղև ու_
րախութիւն մեծ յէմ․ յաւուրցն սա
ղոմոնի որդւոյ դաւթի արքայի իսրայէ
լի ոչ եղև այնպէս տօն յերուսաղէմ ։
27 * Եւ յարեան քահանայքն և ղևտա_
ցիք․ և օրհնեցին զժողովուրդն․ և լսե
լի եղև ձայն նոցա ։ և եկին աղօթք
նց 'ի բնակութիւն սբ Տն յերկինս ։

## ԳԼ ։ ԼԱ ։

1 Եւ իբրև կատարեցաւ այն ամ, և
ամ իէլ գտեալք 'ի քաղաքսն յու
դայ փշրեցին զարձանսն․ և կոտորե_
ցին զանտառսն․ և կործանեցին զբարձ
րաւանդակսն և զբագինսն յամ հրէ
աստանի՝ և բենիամինի․ և յեփրեմի․
և 'ի մանասէի մինչև իսպառ․ և դար
ձաւ ամենայն իէլ իւրաքանչիւրոք 'ի
ժառանգութիւն իւր․ և 'ի քաղաքսն իւր
2 եանց ։ * Եւ կարգեաց եզեկիաս հա_
նապազորդեան պաշտօնեայս քահա_
նայից և ղևտացւոց՝ և զհանապազօ_
րեայս իւրաքանչիւրուրուք ըստ պաշ
տաման իւրում քահանայից և ղևտա
ցւոց յողջակէզսն և 'ի զոհսն փրկու_
թեան․ և յօրհնել՝ և խոստովան լինել՝ և
պաշտել 'ի դրունս սրահից տանն Տն ։

Եւ

3 * Եւ մասն թագաւորին յընչիցն իւրոց · յողջակէզսն առաւօտու և երեկորին · և յողջակէզսն շաբաթուցն և ամսամտիցն՝ 'ի տօնսն գրեալս յօրէնս Տն ։ 4 * Եւ ասաց ժողովրդեանն՝ որք բնակէին յեմ · տալ զմասն քահանայիցն և ղևտացւոց · զի զօրասցին 'ի պաշտօն տանն Տն ։ 5 * Եւ որպէս հրամայեաց բանն, յաւելին ևս որդիքն իսրայէլի զպտուղ ցորենոյն · և գինւոյ · և ձիթոյ · և մեղու · և զամ արմտեաց անդաստանաց · և զտասանորդսն զամենայն բերին բազում յոյժ ։ 6 * Որդիքն իւդի և յուդայ · որք բնակէին 'ի քաղաքսն յուդայ · և նոքա ածին զտասանորդս զուարակացն և ոչխարաց ։ և բերեալ կուտեցին շեղջս շեղջս ։ 7 * Յամսեանն երրորդի սկսան շեղջքն սկիզբն առնուլ · և յեօթներորդում ամսեանն կատարեցան ։ 8 * Եւ եկն եզեկիաս՝ և իշխանքն՝ և տեսին զշեղջսն · և օրհնեցին զՏր · և զժողովուրդն զիւր ։ 9 * Եւ հարցանէր եզեկիաս զքահանայսն և զղևտացիսն վս շեղջիցն ։ 10 * Եւ ասէ ցնա ազարիաս քահանայ իշխան 'ի տանէն սադովկայ · յորմէ հետէ սկսան զպտուղ բերել 'ի տուն Տն · կերաք՝ և արբաք և թողաք զմնացորդս · վզի Տր օրհնեաց զժողովուրդ իւր · և մնաց ևս յոլովութիւնդ այդ ։ 11 * Եւ ասէ եզեկիաս · պատրաստեցէք և այլ ևս շտեմարանս 'ի տանն Տն · և պատրաստեցին ։ 12 * Եւ բերին անդ զպտուղսն, և զտասանորդսն հաւատովք · և էր նոցա վերակացու՝ քովքենիաս ղևտացի · և սեմէի եղբայր նորա փոխանորդ նորին ։ 13 * Եւ յէիէլ · և ազարիաս · և նաթան · և ասայէլ · և յերիմովթ · և յօզաբադ · և եղիէլ · և սամաքիայ · և մաաթ · և բանէաս · և որդիք նր · որք կային անդ 'ի ձեռն քովքենեայ · և սեմեայ եղբօրն նր · որպէս և հրամայեաց արքայ եզեկիաս · և ազարիաս առաջնորդ տանն Տն ։ 14 * Եւ կորէ որդի յեմնեայ ղևտացի՝ դռնապանն ընդ արևելս կողմն 'ի վր տանեացն տալ զպտուղսն Տն · և զսրբութիւնս սրբութեանցն ։ 15 * 'Ի ձեռն ոդոմայ · և բենիամենի · և յեսուայ · և սեմեայ · և մարիասայ · և սեքենեայ · 'ի ձեռն քահանայիցն հաւատարմութբ տալ եղբարցն նոցա ըստ հանապազորդեան պաշտօնէիցն · ըստ մեծի և փոքու ։ 16 * Բաց 'ի ծննդոց արուացն յերեմենից և 'ի վեր · ամ որ մտանէր 'ի տունն Տն · 'ի համար աւուրցն յաւուրս՝ 'ի պաշտօնն հանապազորդեան՝ ըստ կարգին իւրեանց ։ 17 * Եւ այս էր համար քահանայիցն ըստ տոհմիցն · և ղևտացիքն 'ի հանապազորդեան պաշտամանն 'ի քսանամենից և 'ի վեր · 18 'ի կարգի ըստ համարոյն ։ * Յամենայն ծնունդս ուստերացն իւրեանց և դստերաց · հանդերձ ամ յոլովութբ · վասն զի հաւատովք սրբեցին 19 զսրբութիւն որդւոցն ահարոնի ։ * Որք լինէին քահանայք · և 'ի քաղաքացն յամ քաղաքի արք անուանիք · որք անուանեցան տալ զբաժին ամենայն արուի քահանայիցն · և ամի որ մտեալ 20 էր 'ի թիւ ղևտացւոցն ։ * Եւ արար այնպէս եզեկիաս ամենայն յուդայ · և արար բարի և ուղղութիւն առաջի Տն 21 Այ իւրոյ ։ * Եւ ամենայն գործովք, որովք սկսաւ գործել 'ի տանն Տն · ըստ օրինացն Տեառն՝ և ըստ հրամանաց · խնդրեաց զԱծ իւր յամ՝ սրտէ իւրմէ · արար, և յաջողեցաւ ։

## ԳԼ: ԼԲ·

1 Եւ յետ բանիցս այսոցիկ և ճշմարտութեանս այսորիկ՝ եկն սենեքերիմ արքայ ասորեստանեայց 'ի վերայ յուդայ · և բանակեցաւ զպարսպաւոր քաղաքօքն · և ասէր առնուլ զնոսա ։ 2 * Եւ ետես եզեկիաս, եթէ եկն սենեքերիմ դէմ յանդիման նր պատերազմիլ ընդ երուսաղէմի ։ 3 * Խորհեցաւ ընդ ծերսն, և ընդ զօրաւորսն՝ խնուլ զջուր աղբերցն · որք էին արտաքոյ քաղաքին · և խցին զնա ։ 4 * Եւ գումարեաց ժողովուրդ բազում · և խցին զջուրս աղբերցն · և զգետն · որ բաժանիւր անցանելով ընդ մէջ քաղաքին · և ասեն, մի՛ գուցէ եկեալ արքայն ասորեստանի գտցէ 5 ջուր բազում ։ և զօրասցի ։ * Եւ հզօրացաւ եզեկիաս · և շինեաց զամ պարիսպ կործանեալս, և զաշտարակս · և արտաքոյ զառաջին պարիսպն՝ զմիւսն ևս · և զօրացոյց զպատուարսն քաղաքին դաւթի · և կազմեաց զէնս բազումս ։ 6 * Եւ արար իշխանս պատերազմի 'ի վերայ զօրուն · և ժողովեցան առ նա 'ի հրապարակ ձորոյն · խօսեցաւ 'ի սիրտս նոցա՝ և ասէ ։ 7 * Զօրացարուք՝ և քաջ լերուք · մի՛ երկնչիք յերեսաց թագաւորին ասորեստանեայց՝ և մի՛ յերեսաց ամ ազգացն՝ որք ընդ նմա · վզի ընդ մեզ բազումք 8 են քան ընդ նմա ։ * Ընդ նմա բազուկք մարմնեղէնք · և ընդ մեզ Տէր Աստուած մեր ապրեցուցանել զմեզ · և պատերազմիլ զպատերազմն մեր · և քաջալերեցաւ ժողովուրդն բանիւքն եզեկիայ արքայի յուդայ ։ 9 * Եւ յետ այ

Դ Թագ. 18. 13. Եսայ. 36. 1. Սիրաք. 48. 20.

սորիկ առաքեաց սենեքերիմ արքայ
ասորեստանեայց զծառայս իւր յէմ·
և ինքն էր 'ի ղաքիս· և ամ զօրք ընդ
նմա· և առաքեաց առ եզեկիաս ար_
քայ յուդայ յերուսաղէմ, և ասէ ։
* Այսպէս ասէ սենեքերիմ արքայ 10
ասորեստանեայց · յո՞ դուք յուսա_
ցեալ բնակիք յամրոցիդ երմի ։ * Ո՞չ 11
ապաքէն եզեկիաս խաբէ զձեզ մատ_
նել զձեզ 'ի մահ· 'ի սով՝ և 'ի ծարաւ·
և ասէ· Տր Ած փրկէ զձեզ 'ի ձեռաց
արքային ասորեստանեայց ։ * Ո՞չ այդ 12
եզեկիաս է· որ քակեաց զսեղանս նր·
և զբարձունս նր· և ասաց յուդաս
և ցբնակիչս երուսաղէմի· առաջի սե
ղանոյս այսորիկ միայն երկիրպագէք·
և 'ի վերայ սորա զոհեցէք ։ * Ո՞չ գի_ 13
տացիք· զինչ արարի ես՝ և հարքն իմ,
ամ՝ ժողովրդոց և գաւառաց· միթէ
կարելով կարացին աստուածք ազգաց
ամենայն երկրի՝ փրկել զժողովուրդն
իւրեանց 'ի ձեռաց իմոց ։ * Ո՞ որ 14
յամ աստուածոց ազգացն այնոցիկ ոչ
սատակեցին հարքն իմ· միթէ կարա
ցին ապրեցուցանել զժողովուրդն
իւրեանց 'ի ձեռաց իմոց · և զիա՞րդ
կարասցէ Ած ձեր փրկել զձեզ 'ի ձե_
ռաց իմոց ։ * Արդ մի՛ խաբեսցէ զձեզ 15
եզեկիաս · և մի՛ յուսացուսցէ զձեզ
այդ՝ մի՛ հաւատայք դմա· վն զի ոչ կա
րացին ամ աստուածք ազգաց և թա
գաւորութեանց ապրեցուցանել զժողո
վուրդս իւրեանց 'ի ձեռաց իմոց· և 'ի
ձեռաց հարցն իմոց· և Ածդ ձեր ո՛չ փր
կեսցէ զձեզ 'ի ձեռաց իմոց ։ * Եւ այլ 16
ևս խօսեցան ծառայքն նորա 'ի Տէր
Ած՝ և յեզեկիաս ծառայ նորա ։ * Եւ 17
թուղթ գրեաց թշնամանել զՏր Ած
իղի· և ասաց յաղագս նր· զոր օրինակ
աստուածք ազգաց երկրի ոչ փրկե_
ցին զժողովուրդս իւրեանց 'ի ձեռաց
իմոց · նոյնպէս և Ածդ եզեկիայ զժո
ղովուրդ իւր ոչ ապրեցուսցէ 'ի ձե_
ռաց իմոց ։ * Եւ գոչեաց մեծաձայն 18
հրէարէն առ ժողովուրդն երմի · որ
էր 'ի վերայ պարսպին օգնական լի_
նել ինքեանց՝ և կործանել զպարիսպն·
զի վաղվաղակի առցեն զքաղաքն ։
* Եւ խօսեցաւ յԱծն երմի · որպէս 19
և յաստուածս ժողովրդոց երկրի՝ 'ի
գործս ձեռաց մարդկան ։ * Եւ յա_ 20
ղօթս կացին եզեկիաս արքայ · և եսայ
իաս որդի ամոսայ մարգարէ յաղագս
այնորիկ · և գոչեցին յերկինս ։ * ‖ Եւ 21
առաքեաց Տէր հրեշտակ · և սատա_
կեաց զամ զօրաւոր · և զպատերազ_
մող զիշխան · և զզօրագլուխ 'ի բանա
կի արքային ասորեստանեայց ։ և դար

‖ Տօբ· 1· 21·

ձոյց զերեսս իւր ամօթով յերկիրն
իւր· և չոգաւ 'ի տուն աստուծոյն իւր
ոյ· և որք ելեալ էին յորովայնէ նորա՝
22 ընկեցին զնա անդ սրով ։ * Եւ ապրե
ցոյց Տր զեզեկիաս և զբնակիչս երմի
'ի ձեռաց սենեքերիմայ՝ արքային ա_
սորեստանեայց· և 'ի ձեռաց ամենե_
ցունց· և հանգոյց զնոսա շուրջանա_
23 կի ։ * Եւ բազումք բերէին պատա_
րագս Տն յերուսաղէմ· և ընծայս ե_
զեկիայ արքայի յուդայ · և ամբար_
ձաւ առաջի աչաց ամենայն ազգաց ·
24 և յետ այսորիկ ։ * ‖ Յաւուրսն յայնո
սիկ հիւանդացաւ եզեկիաս մինչև 'ի
մահ· և յաղօթս եկաց առ Տէր · և
25 լուաւ նմա· և ետ նմա նշան ։ * Եւ
ոչ ըստ հատուցմանն· զոր ետ նմա ած,
հատոյց անդրէն եզեկիաս· այլ բարձ
րացաւ սիրտ նորա· և եղև 'ի վերայ
նր բարկութի· և 'ի վերայ յուդայ և
26 երմի ։ * Եւ խոնարհեցաւ եզեկիաս
'ի բարձրութէ սրտին իւրոյ՝ և բնա_
կիչքն երմի · և ոչ եկն 'ի վերայ նոցա
բարկութի Տն յաւուրս եզեկիայ ։
27 * Եւ եղև եզեկիայ մեծութի և փառք
բազում յոյժ · և արար իւր գանձս
արծաթոյ· և ոսկւոյ· և ականց պատ
ուականաց· և խունկս· և զէնս · և
28 անօթս ցանկալիս ։ * Եւ քաղաքս
յարմտիս ցորենոյ· և ձիթոյ· և գին_
ւոյ· և գեօղս · և կայանս ամ անաս
29 նոց · և գոմս հօտից ։ * Եւ քաղաքս՝
զորս շինեաց իւր · և պատրաստութի
խաշանց · և արջառոց բազում· վն զի
ետ նմա Տէր ստացուածս բազում
30 յոյժ ։ * Նոյն եզեկիաս եխից զջր_
հորն գեհօնի զվերին· և ուղղեաց զնա
խոնարհագոյն յարևմուտս կողմն քա_
ղաքին դաւթի · և յաջողեցաւ եզե_
31 կիայ յամ գործսն իւր ։ * Եւ այսպ
արար հրեշտակաց՝ և իշխանաց՝ որք
'ի բաբիլոնէ առաքեցան առ նա հար
ցանել վասն նր · և նշանացն, որք ե_
ղեն 'ի վերայ երկրի · և եթող զնա Տր
փորձել զնա՝ և գիտել եթէ զինչ է
32 'ի սրտի նորա ։ * Եւ մնացեալ բանքն
եզեկիայ՝ և ողորմութի նորա · ահա
գրեալ է 'ի մարգարէութին եսայեայ
որդւոյ ամոսայ մարգարէի· և 'ի գիրս
33 թագաւորացն յուդայ՝ և իղի ։ * Եւ
քունեաց եզեկիաս ընդ հարսն իւր ·
և թաղեցին զնա 'ի բարձաւանդակի
գերեզմանաց որդւոցն դաւթի · և
փառս՝ և զպատիւ ետուն նմա 'ի մա_
հուն նորա ամենայն յուդա՝ և բնա_
կիչք երուսաղէմի ։ և թագաւորեաց
մանասէ որդի նորա փոխանակ նորա ։

‖ 4 Թագ· 20· 1· Եսայ· 38· 1·

Գ·Լ։

## ԳԼ: ԻԳ։

‖4 Թագ. 21.2.

1 Էր ‖ ամաց երկոտասանից մանասէ ՚ի թագաւորելն իւրում, և յիսուն և հինգ ամ թագաւորեաց յէմ։ 2 * Եւ արար չար առաջի Տն. յամ գարշուեց ազգացն՝ զորս սատակեաց Տր յերեսաց որդւոցն Իղի։ 3 * Եւ դարձաւ՝ շինեաց զբարձաւանդակս. և զորս կործանեաց եզեկիաս հայրն նր. և կանգնեաց արձանս բահաղիմայ. և արար անտառս. և երկիրպագ ամենայն զօրութեանց երկնի. և ծառայեաց նոցա։ 4 * Եւ շինեաց սեղանս ՚ի տանն Տն. յորում ասաց Տր ‖ յերուսաղէմ եղիցի անուն իմ յաւիտեան։ 5 * Շինեաց անդ սեղանս ամ զօրութեանց երկնի. յերկոսեան սրահս տանն Տն. 6 * Եւ ինքն անցուցանէր զորդիս իւր ընդ հուր յերկրին բենոմայ. և հմայ էր. և հաւահարց լինէր. և գիւթէր. և արար վհուկս՝ և թովիչս. բազմացոյց առնել չար առաջի Տն. առ ՚ի բարկացուցանելոյ զնա։ 7 * Եւ դրօշեալ՝ և ձուլածոն՝ և պատկեր զոր արար ՚ի տանն Տն. ‖ զորմէ ասաց Ած ցդաւիթ և ցսողոմոն որդի նորա. ՚ի տանս յոյսմ, և յերուսաղէմ, զոր ընտրեցի յամ ցեղից Իղի. եդից զանուն իմ յաւիտեան։ 8 * Եւ ոչ ևս յաւելից սասանեցուցանել զոտն Իղի յերկրէս՝ զոր ետու հարցն նոցա. բայց միայն եթէ պահեսցեն առնել զամ, զորինչ պատուիրեցի նց ըստ ամ օրինացն՝ և հրամանացն՝ և իրաւանց ՚ի ձեռն մովսէսի։ 9 * Եւ մոլորեցոյց մանասէ զյուդաս. և զբնակիչսն եէմի առնել չար առաւել քան զամենայն ազգսն՝ զորս եբարձ Տր յերեսաց որդւոցն Իղի։

‖2 Թագ. 7.10.

‖2 Թագ. 7.10.
3 Թագ. 8. 16.

10 * Եւ խօսեցաւ Տր ընդ մանասէի և ընդ ժողովրդեան նորա՝ և ոչ լուան։ 11 * Եւ եած Տր ՚ի վր նր զիշխանս զօրու արքային ասորեստանեայց. կալան զնա. և կապեցին զնա կապանօք. և տարան ՚ի բաբելոն։ 12 * Եւ իբրև վտանգեցաւ. խնդրեաց զերեսս Տն Այ իւրոյ. և խոնարհեցաւ յոյժ յերեսաց Այ հարցն իւրոց։ 13 * Յաղօթս եկաց առ նա. և լուաւ գոչմանն նր. և դարձոյց զնա յերուսաղէմ ՚ի թագաւորութիւն իւր. և ծանեաւ մանասէ՝ եթէ Տր նա է Ած։ 14 * Եւ յետ այսորիկ շինեաց պարիսպ արտաքոյ քաղաքին դաւթի. յարևմտից ընդ հարաւակողմն ՚ի հեղեղատին. և յելս դրանցն շուրջանակի յոփղայ, և բարձրացոյց յոյժ. և կացոյց իշխանս զօրուց յամենայն քաղաքս պարսպաւորս յուդայ։ 15 * Եւ ՚ի բաց եբարձ զաստուածսն օտարս. և զդրօշեալն ՚ի տանէն Տն. և զամենայն սեղանս՝ զորս շինեաց ՚ի լերինն տանն Տն. և յերուսաղէմ. և արտաքոյ քաղաքին։ 16 * Եւ ուղղեաց զսեղանն Տն. և զոհեաց ՚ի վերայ նորա զոհս փրկութեան՝ և օրհնութեան. և ասաց ցյուդաս ծառայել Տեառն Այ Իղի։ 17 * Բայց ժողովուրդն տակաւին ևս երթայր ՚ի բարձունսն. սակայն Տր Ած էր նոցա։ 18 * Եւ մնացեալ բանքն մանասէի՝ և աղօթքն նր, որ առ Ած է. և բանք տեսանողացն՝ որք խօսեցան ընդ նմա յանուն Տն Այ Իղի, ահա են ՚ի բանս թագաւորացն Իղի։ 19 * Եւ բանք աղօթիցն նորա. և յորս լուաւ նմա. և ամենայն մեղքն նորա՝ և ապստամբութիւն նորա. և տեղիքն՝ զորս շինեաց զբարձաւանդակսն. և արար անդ անտառս՝ և դրօշեալս յառաջքան զդառնալն իւրում. ահա գրեալ են ՚ի բանս տեսանողացն։ 20 * Եւ ննջեաց մանասէ ընդ հարսն իւր. և թաղեցին զնա ՚ի դրախտի տանն իւրոյ. և թագաւորեաց փոխանակ նր ամօն որդի նորա։ 21 * Էր ամաց քսան և երկուց ամօն ՚ի թագաւորելն իւրում և երկուս ամս թագաւորեաց յերուսաղէմ։ 22 * Եւ արար չար առաջի Տն. որպէս արար մանասէ հայր նորա. և ամենեցուն կռոցն. զորս արար հայր նորա մանասէ, զոհեաց ամօն՝ և ծառայեաց նոցա։ 23 * Եւ ոչ խոնարհեցաւ առաջի Տն. որպէս խոնարհեցաւ մանասէ հայր նր. այլ որդի նր ամօն յանձնեաց ՚ի մեղս։ 24 * Եւ յարեան ՚ի վերայ նր ծառայքն իւր. և հարին զնա ՚ի տանն իւրում։ 25 * Եւ եհար ժողովուրդ երկրին զյարուցեալս ՚ի վր թագաւորին. և թագաւորեցոյց ժողովուրդ երկրին զյովսիաս որդի նր փոխանակ նորա։

## ԳԼ: ԻԴ։

‖4 Թագ. 22.1.

1 Էր ‖ ութ ամաց յովսիաս ՚ի թագաւորելն իւրում. և երեսուն և մի ամ թագաւորեաց յերուսաղէմ։ 2 * Եւ արար ուղղութիւն առաջի Տն. և գնաց ՚ի ճանապարհս դաւթի հօր իւրոյ. և ոչ խոտորեցաւ յաջ՝ և ոչ յահեակ։ 3 * Եւ յութերորդ ամի թագաւորութեան իւրոյ. և ինքն էր տակաւին ևս մանուկ. սկսաւ խնդրել զՏր Ած դաւթի հօր իւրոյ. և յերկոտասաներորդի ամի թագաւորութեան իւրոյ, սկսաւ սրբել զյուդաս՝ և զեէմ ՚ի բարձանցն՝ և յանտառացն՝ և ՚ի ձուլածոյիցն։ 4 * Եւ կործանեաց դէմ յանդիման իւր զսեղանս բահաղիմայ. և

զբարձաւանդակսն յորոց վ̃ր էին . և կոտորեաց զանտառսն. և զդրօշեալսն՝ և զձուլածուսն փշրեաց՝ և մանրեաց. և ընկէց յանդիմանս շիրմացն այնոցիկ. որք զոհէին նդ: 5 *Եւ զոսկերս քրմացն այրեաց 'ի վ̃ր սեղանոյն. և մաքրեաց զյուդա՝ և զեմ: 6 *Եւ զքաղաքսն եփրեմի՝ և մանասէի. և շմաւօնի. և նեփթաղիմայ. և զտեղիսն նդ շուրջանակի: 7 *Եւ 'ի բաց եբարձ զանտառսն. և զբագինսն. և զկուռսն փշրեաց մանր. և զամենայն բարձունսն 'ի բաց եբարձ յերկրէն իլի. և դարձաւ յերուսաղէմ: 8 *Եւ յամին ութուտասներորդի թագաւորութեն իւրոյ. յորժամ վախճանեաց մաքրել զերկիրն՝ և զտուն թագաւորութեն. առաքեաց զսափան՝ որդի սեղիայ. և զմաասիա՝ իշխանս քաղաքին. և զյովասա՝ որդի յովաքազայ՝ զդպիր յիշատակացն իւրոց՝ զօրացուցանել զտունն Տն Այ իւրոյ: 9 *Եւ եկին առ քեղկիաս քահանայ մեծ. և ետ զարծաթն. որ մտեալ էր 'ի տունն Տն. զոր ժողովեցին ղևտացիք դռնապանք դրանն 'ի ձեռանէ մանասէի՝ և եփրեմի. և իշխանացն. և յամենայն մնացորդացն իլի. և յորդւոցն յուդայ. և բենիամինի. և բնակչացն երուսաղէմի:
10 *Եւ ետուն զայն 'ի ձեռս, որք առնէին զգործն. որք կային 'ի տանն Տն կազմել՝ և զօրացուցանել զտունն: 11 *Եւ ետուն հիւսանցն՝ և շինողացն գնել քարինս չորեքանկիւնիս մեծս. և փայտս 'ի գերանս՝ յարկանել ըզտունսն. զորս քակեցին թագաւորքն յուդայ. 12 *Եւ արքն այնոքիկ կային հաւատովք 'ի վերայ գործոյն՝ և վերակացուքն նդ. յեթ. և աբդիաս. ղևտացիք՝ յորդւոցն մերարեայ: և զաքարիաս. և մեսողոամ յորդւոցն կահաթու այց առնել. և ամենայն ղևտացի ոք որ էր իմաստուն նուագարանօք երգոցն: 13 *Եւ 'ի վերայ բեռնակրացն՝ և 'ի վերայ այնոցիկ որք առնէին զգործն. և զպատրաստութի գործոյն, և ղևտացւոցն էին դպրապետք. և դատաւորք. և դռնապանք:
14 *Եւ 'ի հանելն նդ զարծաթն մտեալ 'ի տուն Տն. եգիտ քեղկիաս քահանայ զգիրս օրինացն Տն որ 'ի ձեռն մովսէսի:
15 *Պատասխանի ետ քեղկիաս՝ և ասէ ցսափան դպրապետ. զգիրս օրինաց գտի 'ի տանն Տն. և ետ քեղկիաս զգիրսն ցսափան: 16 *Եւ տարաւ սափան զգիրսն առ արքայ. և ետ արքայի զհամար տ̃ն տուէլոյ արծաթոյ 'ի ձեռս ծառայիցն նորա. որք առնէին զգործն: 17 *Եւ ձուլեցին զարծաթն գտեալ 'ի տան Տն. և ետուն զայն 'ի ձեռս վերակացուացն. և 'ի ձեռս այնոցիկ. որք առնէին զգործն: 18 *Եւ պատմեաց սափան դպրապետ արքայի՝ և ասէ. զգիրս օրինաց ետ ցիս քեղկիաս քահանայ. և ընթերցաւ զայն սափան առաջի թագաւորին: 19 *Եւ եղև իբրև լուաւ արքայ զբանս օրինացն՝ պատառեաց զպատմուճան իւր: 20 *Եւ պատուէրեաց արքայ քեղկեայ. և աքիկամայ որդւոյ սափանայ. և աբդիայ՝ որդւոյ միքեայ. և սափանայ դպրապետի. և ասայիայ մանկան արքայի՝ և ասէ:
21 *Երթայք՝ և խնդրեցէք 'ի Տէ վասն իմ, և վասն ամենեցուն մնացորդացս յիլէ և յուդայ. յաղագս բանից գրոցդ այդոցիկ. որք գտան. վասնզի մեծ սրտմտութի Տն բորբոքեալ է 'ի մեզ. զի ոչ լուան հարքն մեր զբանս Տն առնել ըստ ամենայնի. որ ինչ գրեալ է 'ի գիրսդ յայդոսիկ: 22 *Եւ գնաց քեղկիաս. և որոց ասացն արքայ. առ ողդան մարգարէ կին սեղեմայ՝ որդւոյ թակուաթայ. որդւոյ եսերայ. որ պահէր զպատմուճանսն. և ինքն բնակիւր յերուսաղէմ 'ի մասենայ. և խօսեցան ընդ նմա ըստ բանիցն այնոցիկ: 23 *Եւ ասէ ցնոսա. այսպէս ասէ Տր Ած իլի. ասասջիք ցայրն. որ առաքեացն զձեզ առ իս: 24 *Այսպէս ասէ Տր. ահա ես ածեմ չարիս 'ի վերայ տեղւոյդ այդորիկ. զա̃մ բանս գրեալս 'ի գիրսդ զորս ընթերցան առաջի արքայիդ յուդայ: 25 *Փոխանակ զի թողին զիս. և զոհեցին աստուծոց օտարաց. զի բարկացուցանիցեն զիս գործովք ձեռացն իւրեանց. և բորբոքեցաւ սրտմտութի իմ 'ի տեղւոջդ յայդմիկ. և ոչ եւս շիջցի: 26 *Եւ ցթագաւորն յուդայ. որ առաքեաց զձեզ խնդրել զՏէր. այսպէս ասասջիք ցնա. այսպէս ասէ Տր Ած իլի. զբանսդ՝ զոր լուար դու: 27 *Եւ պատկառեցաւ սիրտ քո. և խոնարհեցաւ առաջի երեսաց իմոց 'ի լսել ըզբանս իմ 'ի վ̃ր տեղւոյդ այդորիկ. և 'ի վերայ բնակչացդ դորա. և դու խոնարհեցար առաջի իմ. պատառեցեր զպատմուճանս քո. և լացեր յանդիման իմ. և ես լուայ. ասէ Տր: 28 *Ահա յաւելից զքեզ առ հարս քո. և դիցեն զքեզ 'ի շիրմին քում խաղաղութեամբ. և ոչ տեսցեն աչք քո զա̃մ չարիսն. զոր ես ածից 'ի վերայ տեղւոյդ այդորիկ. և 'ի վերայ բնակչաց դորա: ‖Եւ ետուն 29 թագաւորին զբանս զայսոսիկ: *Եւ առաքեաց արքայ. և ժողովեաց ըզծերսն յուդայ. և զեմի: 30 *Եւ ելաբ

‖4 Թագ 23.1.

քայ

քայ յուդայ 'ի տունն Տն. և ամ յու-
դաս. և բնակիչք Եմի. և քահանայքն
և ղևտացիք. և ամ ժողովուրդն 'ի մե-
ծէ մինչև 'ի փոքր. և ընթերցաւ յա-
կանջս նոցա զամ բանս կտակին գտե-
լոյ 'ի տանն Տն ։ 31 * Եւ յարեաւ թա-
գաւորն՝ եկաց 'ի վերայ սեանն. և եդ
ուխտ առաջի Տն երթալ զհետ Տն
և պահել զպատուիրանս նր ։ և զվկայ
ութիւնս նորա. և զհրամանս նորա. 'ի
բոլոր սրտէ. և 'ի բոլոր անձնէ. զբանս
ուխտին՝ զգրեալս 'ի գիրս յայնոսիկ ։
32 * Եւ կացոյց զամենեսեան զգտեալսն
յԵմ. և 'ի բենիամինի. և արարին
բնակիչքն Եմի ուխտ 'ի տան Տն ԱՅ
հարցն իւրեանց ։ 33 * Եւ 'ի բաց եբարձ
յօսիաս զամենայն գարշելիս յամ երկ
րէ. որ էր որդւոյն իլի. և արար ամ
գտելոցն յԵրուսաղէմ՝ և յիլի 'ի ծա
ռայել Տն ԱՅ իւրեանց՝ զամենայն
աւուրս իւր. ոչ խոտորեցաւ 'ի հետոց
Տն ԱՅ հարցն իւրոց ։

## Գլ. ԼԵ.

4 Թագ. 23.21. 1 Եզր. 1.1.

1 ԵՒ արար յօսիաս զպասեքն Տն
ԱՅ իւրոյ. և զենին զպասեքն 'ի
չորեքտասաներորդում աւուր ամսոյն
առաջնոյ ։ 2 * Եւ կացոյց զքահանայսն
'ի վերայ պահպանութեն իւրեանց. և
զօրացոյց զնոսա 'ի գործս տանն Տն ։
3 * Եւ ասէ ցղևտացիսն՝ և ցզօրաւորսն
յամ իլի սրբել զնոսա Տն. և եդին
զտապանակն սրբութե 'ի տանն. զոր
շինեաց սողոմոն որդի դաւթի արքայ
իլի. և ասէ արքայ. ոչ է ձեզ բառնալ
'իւիք ուսոց՝ և ոչ ինչ. արդ պաշտեցէք
զՏր ԱԾ ձեր. և զժողովուրդ նր զիէլ.
4 * Եւ պատրաստք լերուք ըստ տանց
տոհմից ձերոց. և ըստ օրամտից պաշ
տաման ձերոյ. ըստ գրոցն դաւթայ
արքայի իլի. և 'ի ձեռն թագաւորին
սողոմոնի որդւոյ նր ։ 5 * Եւ կացէք 'ի
տաճարին ըստ որոշման տոհմից ձե-
րոց՝ առաջի եղբարց ձերոց. և որդւոց
ժողովրդեան ձերոյ. և բաժին տան
ցեղին ղևտացւոց ։ 6 * Եւ զոհեցէք
զպասեքդ. և պատրաստեցէք զորբու
թիւն եղբարց ձերոց առնել ըստ
բանին Տեառն. որ 'ի ձեռն մովսէսի ։
7 * Եւ սկսաւ յոսիաս տալ որդւոց
ժողովրդեանն. խոյս. և որոջս. և
նոխազս յորդւոց այծեաց. զամե-
նայն 'ի պասեքն ։ և զամենեսեան.
որինչ գտաւ թուով երեսուն հազար.
և զուարակս երիս հազարս. այսոքիկ
'ի ստացուածոց թագաւորին ։
8 * Եւ իշխանքն նորա սկսան տալ ժո-
ղովրդեանն՝ և քահանայիցն՝ և ղև-
տացւոցն ։ և ետուն քեղկիաս. և զա-
քարիաս. և յէիէլ. և իշխանք տանն
ԱՅ. քահանայիցն ետուն 'ի պասեքն.
խոյս. և որոջս. և նոխազս երկուս հա
զարս և վեց հարիւր. և զուարակս
երեք հարիւր ։ 9 * Եւ քոնենիաս. և
բանէաս. և սամէաս. և նաթանայէլ
եղբայրն նր. և ասաբիաս. և յէիէլ. և
յօզաբադ իշխանք ղևտացւոցն. սկսան
տալ ցղևտացիսն 'ի պասեքն. խոյս
հինգ հազար. և զուարակս հինգ հա
րիւր ։ 10 * Եւ ուղղեցաւ պաշտօնն ։ և կա
ցին քահանայքն 'ի կարգին իւրեանց.
և ղևտացիքն 'ի զատուցմանն իւրեանց
ըստ պատուիրանի արքային ։ 11 * Եւ զենին
զպասեքն. և հեղին քահանայքն զա-
րիւնն 'ի ձեռաց իւրեանց. և ղևտա-
ցիքն յօշեցին ։ 12 * Եւ պատրաստեցին
զողջակէզսն տալ նոցա իւրաքանչ
իւրումեք ըստ զատուցմանն. վասն
տանց տոհմից որդւոց ժողովրդեանն
մատուցանել Տն. ոպ և գրեալ է 'ի
գիրս օրինաց մովսէսի. նոյնպէս և յա-
ռաւօտինսն ։ 13 * Եւ խորովեցին զպա
սեքն հրով ըստ օրինին. և զորբութիւնս
եփեցին կաթսայիւք. և սանիւք. և յա
ջողեցաւ. և ընթացան առ ամենե-
սեան որդիս ժողովրդեանն ։ 14 * Եւ
յետ պատրաստելոյն նոցա և քահա-
նայիցն ։ վն զի քահանայքն էին մա
տուցանել զճարպսն և զողջակէզսն
մինչև 'ի գիշերն. և ղևտացիքն պատ
րաստեցին իւրեանց՝ և եղբարցն իւր
եանց որդւոցն ահարոնի ։ 15 * Եւ սաղ
մոսանուագքն որդիք ասափայ 'ի կար
գին իւրեանց ըստ պատուիրանի դաւ-
թայ. և ասափ. և եման. և իդի-
թուն. մարգարէք արքային ։ և իշ-
խանք. և դռնապանք իւրաքանչիւրոյ
դրանն. և ոչ էր նց հնար շարժիլ 'ի
պաշտամանէ սրբութեն. վն զի եղ-
բարքն նց ղևտացիքն պատրաստեցին
նց ։ 16 * Եւ ուղղեցաւ՝ և պատրաստե
ցաւ ամ պաշտօնն Տն յաւուր յայնմիկ
առնել զպասեքն. և. մատուցանել
զողջակէզսն 'ի վերայ սեղանոյն Տն.
ըստ պատուիրանին յօսիայ արքայի ։
17 * Եւ արարին որդիքն իլի, որք գտան
անդ, զպասեքն 'ի ժամանակին յայնմ.
18 և զտօն անխմորիցն՝ զեօթն օր ։ * Եւ
ոչ եղև պասեք նման նմա յիլի.
յաւուրցն սամուելի մարգարէի ։ և
ամենայն թագաւորքն իլի ոչ արա
րին պասեք՝ ոպ արար յօսիաս ։ և քա-
հանայքն. և ղևտացիք. և ամենայն
յուդաս և իէլ. որ գտաւ անդ. և բնա
19 կիչք Եմի ։ * Արարին Տն յութե-
տասներորդ ամի թագաւորութեն

յօսիայ ։ ( Եւ զվհուկս ․ եւ զգէտս ․ եւ զդիւթս ․ եւ զկուռս ․ եւ զկախարդս ․ որք էին յերկրին յուդայ եւ յեմ, 'ի բաց եբարձ՝ եւ այրեաց հրով արքայ յօսիաս ։ զի հաստատեսցէ զբանս օրինացն ․ զգրեալսն՝ 'ի գիրս ․ զոր եգիտ քեղկիաս քահանայ 'ի տանն Տն ։ Նման նմա ոչոք եղեւ յառաջ քան զնա ․ որ դարձաւ առ Տր Ած 'ի բոլոր սրտէ իւրմէ ․ եւ 'ի բոլոր անձնէ իւրմէ ․ եւ յամ զօրութէ իւրմէ ․ ըստ ամ օրինաց մովսէսի ․ եւ յետ նր ոչոք յարեաւ նմանն նմա ։ սակայն ոչ դարձաւ Տր 'ի բարկութէ սրտմտութե իւրոյ մեծէ ․ զոր բարկացաւ սրտմտութբ Տր 'ի վր յուդայ ամ բարկութքն ․ որովք բարկացոյց զնա մանասէ ․ եւ ասաց Տր ․ այլեւ զյուդաս մերժեցից յերեսաց իմոց ․ որպէս մերժեցի զիսրայէլ ․ եւ 'ի բաց արարից զքաղաքն ․ զոր ընտրեցի՝ զեմ ․ եւ զտունն, զորմէ ասացի՝ եղիցի անուն իմ անդ ։ )

20 * Եւ ել փարաւոն նեքաւով արքայ եգիպտոսի 'ի վերայ արքային ասորեստանեայց ․ առ գետովն եւփրատաւ ։ եւ գնաց արքայ յօսիաս ընդդէմ նորա ։

4 Թագ 23. 29.

21 * Եւ առաքեաց առ նա հրեշտակս ․ եւ ասէ ․ զի՞նչ կայ իմ եւ քո արքայ յուդայ ․ ոչ եմ եկեալ 'ի վերայ քո այսօր պատերազմ առնել ։ եւ Ած ասաց փութալ ինձ ․ զգո՛յշ լեր յԱյ ․ որ է ընդ իս ․ մի՛ գուցէ ապականիցէ զքեզ ։

22 * Եւ ոչ դարձոյց յօսիաս զերեսս իւր 'ի նմանէ ․ այլ պատերազմիլ ը նմա զօրացաւ ։ եւ ոչ լուաւ բանիցն նեքաւովայ՝ որ 'ի բերանոյ Տն ։ Եւ եկն պատերազմիլ 'ի դաշտին մակեդովայ ։

Զաք. 12. 11.

23 * Եւ հարին աղեղնաւորք զարքայ յօսիաս ։ եւ ասէ արքայ ցծառայսն իւր ․ հանէք զիս աստի ․ վն զի վտանկեցայ յոյժ ։

24 * Եւ հանին զնա ծառայքն նր 'ի կառացն իւրոց ․ եւ եդին զնա 'ի կառն յերկրորդ ․ որ էր նորա ․ եւ տարան զնա յեմ ։ եւ մեռաւ՝ եւ թաղեցաւ ընդ հարսն իւր ։ եւ ամ յուդաս՝ եւ եմ սուգ առին 'ի վերայ յօսիայ ։

25 * Եւ ասաց ողբս երեմիաս 'ի վերայ յօսիայ ։ եւ ամ իշխանքն՝ արք եւ կանայք ասացին զողբսն 'ի վերայ յօսիայ մինչեւ ցայսօր ։ եւ ետուն զայն իբրեւ հրամանաւ 'ի մէջ իղի ․ եւ ահա գրեալք են 'ի Ձաւս ողբոցն ։

26 * Եւ էին բանքն յօսիայ ․ եւ յոյս նր գրեալ յօրէնսն Տն ։

ըստ գրե_ ցելոյն յօ րէնս Տն

27 * Եւ մնացեալ բանքն նորա առաջինք եւ վերջինք ․ ահա գրեալ են 'ի գիրս թագաւորացն իղի եւ յուդայ ։

## ԳԼ ։ ԼԶ ։

1 Եւ Առ ժողովուրդ երկրին զյովաքազ զորդի յօսիայ ․ եւ օծին զնա ․ եւ կացուցին զնա թագաւոր փոխանակ հօր նորա յեմ ։

4 Թագ 23. 30.

2 * Որդի քսան եւ երից ամաց էր յովաքազ 'ի թագաւորելն իւրում ։ եւ զերիս ամիսս թագաւորեաց յեմ ։ ( եւ անուն մօր նր ամիտաղ ․ դուստր երեմիայի 'ի ղոբնայ ։ ) եւ արար չար առաջի Տն ․ ըստ ամի զոր ինչ արարին հարքն նորա ։

3 * Եւ կալեաց զնա փարաւոն նեքաւով 'ի դեբղաթայ՝ յերկրին եմաթայ ․ ոչ եւս թագաւորել նմա յեմ ։ եւ տարաւ զնա արքայն յեգիպտոս ։ եւ էարկ 'ի վերայ երկրին հարկ ․ հարիւր տաղանդ արծաթոյ ․ եւ տաղանդ մի ոսկւոյ ։

4 * Եւ կացոյց փարաւոն նեքաւով զեղիակիմ որդի յօսիայ արքայի յուդայ ․ փոխանակ յօսիայ հօր նորա ։ եւ փոփոխեաց զանուն նորա յովակիմ ։ եւ զյովաքազ եղբայր նր էառ փարաւոն նեքաւով ․ եւ տարաւ յեգիպտոս ․ (եւ մեռաւ անդ ։ եւ զարծաթն եւ զոսկին ետուն փարաւոնի ։ յայնմ հետէ սկսաւ տալ հարկս երկիրն ․ եւ ետուն զարծաթն ըստ բերանոյ փարաւոնի ․ եւ յիւրաքանչիւրումէքէ ըստ զօրութե իւրոյ պահանջէին զարծաթն եւ զոսկին ․ 'ի ժողովրդենէ երկրին ․ տալ զայն փարաւոնի նեքաւովայ ։ )

Մատ. 1. 14.

5 * Եր քան եւ հինգ ամաց յովակիմ 'ի թագաւորելն իւրում ․ եւ զմետասան ամ թագաւորեաց յեմ ․ ( եւ անուն մօր նորա զեկքորայ ․ դուստր ներիայ 'ի հռամայ ) եւ արար չար առաջի Տն ։ ըստ ամի զոր ինչ արարին հարքն նր ։ ( յաւուրս նորա ել նաբուգոդոնոսոր արքայ բաբելոնի յերկիրն ․ եւ ծառայեաց նմա ամս երիս ․ եւ ապստամբեցաւ 'ի նմանէ ։ եւ առաքեաց Տր զքաղդէացիսն ․ եւ զաւազակսն ասորեաց ․ եւ զաւազակսն մովաբացւոց ․ եւ որդւոցն ամոնայ ․ եւ սամարիայ ։ եւ 'ի բաց կացին յետ բանիցս այսոցիկ ըստ բանի Տն , 'ի ձեռն ծառայից իւրոց մարգարէից ։ սակայն սրտմտութի 'ի Տէ էր 'ի վերայ յուդայ , 'ի բաց առնել զնա յերեսաց իւրոց ․ վն մեղացն մանասէի ․ յամի զոր ինչ արար ․ եւ անպարտ արեանցն ․ զոր եհեղ յովակիմ ․ եւ ելից զեմ անպարտ արեամբ ․ եւ ոչ կամեցաւ Տր սատակել զնոսա ։ )

6 * Եւ ել 'ի վր նորա նաբուգոդոնոսոր արքայ բաբելոնի ․ եւ կալեաց զնա պղնձի կապանօք ․ եւ տարաւ զնա 'ի բաբելոն ։

7 * Եւ մասն ինչ 'ի սպասուց

տանն

տանն Տն տարաւ 'ի բաբիլոն. եւ եդեալ 'ի տաճարին իւրում. որ 'ի բաբիլոնի: *8 Եւ մնացեալ բանքն յովակիմայ. եւ ամենայն զոր արար. ոչ ահա նիկ գրեալ են նոքա 'ի գիրս բանից աւուրց թագաւորացն յուդայ: եւ քուննեաց յովակիմ ընդ հարսն իւրում. եւ թաղեցաւ 'ի գանոզայ ընդ հարսն իւր: եւ թագաւորեաց յեքոնիաս որդի նորա փոխանակ նորա: *9 Որդի ութեւտասն ամաց էր յեքոնիաս 'ի թագաւորելն իւրում. եւ ամիս երիս. եւ աւուրս տասն թագաւորեաց յերուսաղէմ. եւ արար չար առաջի Տն: *10 Եւ 'ի դառնալ տարւոյն, առաքեաց արքայն նաբուգոդոնոսոր. եւ տարաւ զնա 'ի բաբիլոն հանդերձ ցանկալի օպասուք տանն Տն: եւ թագաւորեցոյց զսեդեկիաս եղբայր հօրն նր 'ի վերայ յուդայ յեմ: *11 Ամաց քսան եւ միոյ էր սեդեկիաս 'ի թագաւորելն իւրում. եւ մետասան ամ թագաւորեաց յեմ: *12 Եւ արար չար առաջի Տն Այ իւրոյ. ոչ պատկառեցաւ յերեսաց երեմիայի մարգարէի՝ եւ 'ի բանիցն Տն: *13 Եւ յապստամբել նր 'ի նաբուգոդոնոսորայ արքայէ. եւ անցանել զերդմամբքն. զոր երդմնեցոյց զնա յԱծ իւր. խստացոյց զպարանոց իւր. եւ զսիրտ իւր կարծրացոյց՝ ոչ եւս դառնալ առ Տր Ած իւր: *14 Եւ ամ փառաւորքն յուդայ. եւ քահանայք՝ եւ ժողովուրդ երկրին յաճախեցին անօրինել անօրէնութիւս ըստ գարշելեաց ազգացն. եւ պղծեցին զտուն Տն յեմ: *15 Եւ առաքեաց Տր Ած հարցն նց 'ի ձեռն մարգարէից. կանխեալ առաքեաց զհրեշտակս իւր. վն զի խնայէր 'ի ժողովուրդն իւր. եւ 'ի սրբութիւս իւր: *16 Արհամարհէին զհրեշտակս նր. եւ անգոսնէին զբանս նր. եւ խաղային զմարգարէսն. մինչեւ եղեւ բարկութի Տն 'ի վերայ ժողովրդեան իւրոյ: եւ ոչ եւս գոյր այնուհետեւ նց բժշկութի: *17 Եւ եած 'ի վերայ նց զթագաւորն քաղդէացւոց: կոտորեաց զերիտասարդս նոցա սրով 'ի տան սրբութե իւրոյ. եւ ոչ խնայեաց 'ի սեդեկիաս: կուսանաց նց ոչ ողորմեցաւ. եւ զծերս նոցա զամենեսեան մատնեաց 'ի ձեռս նոցա: *18 Եւ զամ սպաս տանն Այ զմեծամեծս եւ զփոքունս. եւ զամ գանձն արքային՝ եւ մեծամեծացն. զամ տարաւ 'ի բաբիլոն: *19 Եւ այրեաց զտունն Տն: եւ կործանեաց զպարիսպն եմի. եւ զապարանսն, որք 'ի նմա, այրեաց հրով: եւ զամ անօթ գեղեցիկ ապականեաց: *20 Եւ գերեաց զմնացորդսն 'ի բաբիլոն: եւ էին անդ նմա եւ որդւոց նորա 'ի ծառայութե. մինչեւ 'ի թագաւորութիւն մարաց: *21 Առ 'ի լնուլ բանին Տն 'ի բերանոյ երեմիայ. մինչեւ ընկալաւ երկիրն զշաբաթս իւր. եւ շաբաթանալով զամ աւուրս աւերածոյն իւրոյ շաբաթացաւ. 'ի կատարումն ամաց եօթանասնից: *22 Յառաջնում ամի կիւրոսի արքայի պարսից. յետ լնլոյ բանին Տն 'ի բերանոյ երեմիայի. զարթոյց Տր զհոգի կիւրոսի արքային պարսից. եւ պատուիրեաց քարոզել յամենայն թագաւորութեան իւրում գրով՝ եւ ասել: *23 Այսպէս ասէ կիւրոս արքայ պարսից. զամենայն թագաւորութիւնս երկրի ետ ինձ Տէր Ած երկնից: եւ նա պատուիրեաց ինձ շինել իւր տուն յերուսաղէմ 'ի հրէաստանի: որ ոք 'ի ձէնջ յամ ժողովրդենէ նորա իցէ, Տր Ած իւր եղիցի ընդ նմա. եւ ելցէ:

Դ.Թագ. 24.8. Երեմ. 37.1.
Երեմ. 52.1.
Երեմ. 25.13. եւ 29.10. 2.Եզր. 1.1. եւ 6.3.

ԳԻՐՔ



Եւ Զօրաբաբէլ. որ ասաց վասն կանանց, եւ վասն ճշմարտութե աչ... խօսել, եւ ասէ. 1. Եզր. 4. 13.



Եւ հարցանէր Եզրաս զգիրս օրինացն յառաջնոյ ժողովրդեան տաճարին յընդարձակէին. 1. Եզր. 9. 41.

# ԳԻՐՔ ԵԶՐԱՍԱՅ

## ԱՌԱՋՆԵՐՈՐԴ.

Որ ըստ լատինացւոց է երրորդ.

Գլուխ Առաջներորդ.

4 Թագ. 23. 21. 2. Մնա. 35. 1.



1 ԵՒ ԱՐԱՐ ՅՈՍԻԱ ԹԱգաւոր զզատիկն Տ՟ն յԵ՟մ. եւ եզեն զզատիկն Տ՟ն 'ի տասն եւ 'ի չորս ամսոյն առաջնոյ: 2 * Եւ կարգեալ կացոյց զքահանայս 'ի տաճարին Տ՟ն. ըստ ա՟մ օրաթուրին զգեցեալ զպատմուճան քահանայութե: 3 * Եւ ասաց ղեւտացւոցն սպասաւորս. սրբեցէք զանձինս ձեր. եւ պատրաստեցէք ըստ սրբութե տապանակին կտակարանաց Տ՟ն. 'ի տաճարին զոր շինեաց սողոմոն թագաւոր որդի դաւթայ: 4 * Եւ մի գոյցէ 'ի ձեզ աղտեղութի եւ պղծութի. եւ այդ պաշտեցէք զպաշտօն Տ՟ն Ա՟յ ձերոյ. եւ ժողովեցէք. եւ պատրաստեցէք զա՟մ ազգն Ի՟ղի. եւ կարգեցէք զնոսա ըստ կարգի հայրապետացն՝ եւ ցեղիցն իւրեանց: 5 * Որպէս կարգեաց, եւ գրեաց դաւիթ թագաւոր Ի՟ղի. եւ որդի նորա մեծն սողոմոն. եւ կացցեն 'ի տաճարին ղեւտացիքն. ըստ կարգի իւրաքանչիւր հարցն իւրեանց. առաջի եղբարցն 6 իւրեանց որդւոցն Ի՟ղի: * Եւ ըստ առաջին կարգացն զենէք զզատիկն. եւ պատրաստեցէք զզոհսն. եւ արարէք զզատիկն ըստ հրամանի Տ՟ն որ հրա7մայեաց 'ի ձեռն մովսէսի: * Եւ շնորհեաց պարգեւեաց յոսիա ժողովրդեանն գառինս եւ ուլս երեսուն հա8զարս. որթս երիս հազարս: * Օսյս ամենայն տուեալ ըստ հրամանի թագաւորին ժողովրդեանն, եւ քահանայից:

նայից: (և ղևտացւոց. և զարձեալ
եւ քեռ կիայ և զաքարիայ քահանայա
պետին. և առաջնորդաց ժողովր-
դեանն. և քահանայիցն ) ոչխարս
երկուս հազարս և վեց հարիւր:

9 *Եւ յեքոնիաս. և սամէաս, և նաթա
նայէլ եղբայր. և ասաբիաս. և ոզիէլ.
և յորամ. հազարապետք. ետուն
ղևտացւոցն վասն զատկին ոչխարս
հինգ հազարս. և որթս հինգ հա-
րիւր: 10 *Եւ առեալ զայս ամենայն քա
հանայիցն, մեծապէս և ճմ վայելչու-
թբ, զարմանազան պատրաստեցին
զզատիկն բաղարջակերաց: 11 *Ըստ
տոհմս իւրեանց. և ըստ կարգաց դա
սուց հարցն իւրե̃ց. յօրինեալ կացին քա
հանայքն առաջի ժողովրդեանն. մա
տուցանել Տն զզատիկն ըստ գրեցե-
լոցն յօրէնսն մովսէսի: 12 *Եւ այսպէս
ը առաւօտուն խորովեալ հրով պատ
րաստեցին զզատիկն Տն. և զայլ
հունձս հանդերձ անուշութբ եփե-
ցին 'ի կաթսայս և 'ի սանս: 13 *Եւ մա
տուցին յերեսաց ժողովրդեանն. և
զհետ այսորիկ քահանայապետքն
պատրաստեցին զինքեանս: (և զեղ
բարսն իւրեանց զորդիսն ահարօնի: )
14 *Քանզի քահանայքն մատուցանէին
զճարպ հրոյն կիզման. և ղևտացիքն
պատրաստեցին զինքեանս և զեղբարս
իւրեանց զքահանայս՝ զորդիս ահա-
րօնի: 15 *Եւ որդիքն ասափայ՝ երգիչք
սաղմոսաց. պատրաստեցին զինքեանս.
որպէս և էր կարգեալ դաւթայ թա-
գաւորի. զասափ. և զզաքարիայ. և
զեդ դինօն: 16 *Եւ դռնապանքն իւրա
քանչիւր դրանց էին զգուշացեալք ը
իւրաքանչիւր կարգի աւուրն. քանզի
էին և նոքա որդիք ղևեայ. և պատրաս
տեցին զինքեանս: 17 *Եւ ամենեքեան
միաբան կատարեցին զզոհն Տն յաւ
ուրն յայնմիկ: 18 *Եւ մատուցին զզա-
տիկն Տն 'ի վերայ սեղանոյն ըստ հրա
մանի թագաւորին յովսիայ: 19 *Եւ արա
րին որդիքն իղի. որք գտան 'ի ժամա
նակին յայնմիկ՝ զզատիկն Տն. և զտօն
բաղարջակերացն աւուրս եօթն.
20 *Եւ ոչ եղև երբեք այսպէս զատիկ 'ի
մէջ իսրայէլի. քանզի ոչոք արար զա-
տիկ 'ի ժամանակացն սամուէլի մար-
գարէի: 21 *Եւ ոչ ամենայն թագա-
ւորքն իղի արարին զզատիկն այնպէս.
որպէս արար յովսիա թագաւոր. և քա
հանայքն. և ղևտացիքն. և հրեայքն.
և ճմ իէլ. որք բնակեալ քէին 'ի ժա-
մանակին յայնմիկ յերուսաղէմ:
22 *Յութ և 'ի տասներորդի ամի թա
գաւորութեն յովսիայ արար զզատիկն

23 զայն: *Եւ էին ուղիղք գործք յովսիայ
առաջի Տն Ած իւրոյ. և ծառայէր
Տն ճմ սրտիւ և մտօք իւրովք: 24 *Եւ
այլք թագաւորք. որք եղեն յառաջ
քան զնա. վասն որոց գրեալ իսկ է.
որք մեղան. և անօրինեցան յամենայն
ազգս. և տրտմեցուցին զՏր. և կա-
ցին ընդդէմ բանի նորա 'ի մէջ իղի:
25 *Եւ յետ այսր ամենայնի առաքինու
թեց յովսիայ. եկն փարաւօն թագա-
ւոր եգիպտացւոց պատերազմել 'ի
կարքամիս. 'ի կողմանս եւփրատայ.
և ել պատերազմել ընդդէմ նր յովսիա:
26 *Եւ յղեաց առ նա թագաւորն եգիպ
տացւոց՝ և ասէ. զի՞ կայ իմ և քո թա
գաւորդ հրէաստանի: 27 *Ոչ եթէ առ
քեզ ինչ առաքեաց զիս Տր Ած. քան
զի 'ի կողմանս եւփրատայ երթամ
պատերազմել. և այժմ Տր ընդ իս է.
և մի խափաներ զիս. զի ստիպէ զիս
Տր երթալ պատերազմել 'ի կողմանս
եւփրատայ. 'ի բաց կաց յինէն. և մի
ընդդիմանար Տն: 28 *Եւ ոչ դարձոյց
յովսիա զկառս իւր. այլ 'ի պատերազ
միլ ը նմա ձեռնարկեաց. և ոչ լուա
բանիցն երեմիայի մարգարէի. զոր
խօսէր ը նմա 'ի բերանոյ Տն: 29 *Այլ
խմբեաց տալ պատերազմ ը նմա 'ի
դաշտին եղմակեդդովայ դաւուս. և
իջին իշխանքն առ թագաւորն յովսիայ:
30 *Եւ ասէ յովսիա թագաւոր ցծառայս
իւր. հանէք զիս 'ի բաց 'ի պատերազ
մէս. քանզի տկարացայ յոյժ. և
վաղվաղակի հանին զնա 'ի բաց ծա-
ռայքն նորա 'ի պատերազմէն:
31 *Եւ ել յերկրորդ կառն իւր: Եւ
հասեալ յերուսաղէմ վախճանեցաւ.
և՛ թաղեցաւ ընդ հարսն իւր:
32 *Եւ ամենայն ժողովուրդն ողբա-
ցին. և սուգ առին 'ի վերայ յովսիայ.
և եհան երեմիա մարգարէ ողբս 'ի
վր յովսիայ. և նստեալ ը կանայս ող
բան զողբս երեմիայ մինչև ցայսօր. և
ետուն հրաման հանապազ յազգսն
իւրեանց ողբալ 'ի մէջ իղի: 33 *Այս ամե
նայն գրեալ է 'ի գիրս պատմութեց թա
գաւորաց իղի. զգործսն՝ զոր գործեաց
յովսիա. և զառաքինութիւն՝ զոր առա
քինացաւ. և վասն մեծ արդարութե
նորա. և փառաց. և իմաստութե
զգուշաւորութե իւրոյ. զոր ունէր
առ օրէնս Տն. և զայս ամենայն մին-
չև ցայժմ պատմեն գիրք թագաւո-
րութեն իսրայէլի՝ և յուդայ: 34 *Եւ
առեալ թագաւորեցուցին յազգէ
նորա. զյեքոնիա որդի յովսիայ. և թա
գաւորեաց յեքոնիա փոխանակ հօր
իւրոյ յովսիայ. լեալ ամաց քսանևե-

րից։ 35 *Եւ թագաւորեաց Հրէաստա-
նի և Երուսաղեմի ամս երիս. և ար-
գել թագաւորն Եգիպտացւոց. զի
մի՛ որ թագաւորեսցէ յԵրուսաղէմ։
36 *Եւ արար ծախս նմ Հարիւր տաղանդ
արծաթոյ. և տաղանդ մի ոսկւոյ։
37 *Եւ կացոյց նմ թագաւորն Եգիպտա-
ցւոց՝ թագաւոր. զՅովակիմ զեղբայր
յեքոնիայ. և թագաւորեաց Յովակիմ
Հրէաստանի և Երուսաղեմի։ 38 *Եւ
կապեաց Յովակիմ զմեծամեծս և զիշ-
խանս տանն իմի. և զարայ զեղբայր
իւր եհան. և եած առ իւր յերկրէն
Եգիպտացւոց։ 39 *Եւ էր ամաց քսան
և հնգից Յովակիմ, յորժամ թագաւո-
րեաց ՚ի վերայ Հրէաստանի և Երուսա-
ղեմի. և արար չար առաջի Տն։
40 *Յաւուրս նր ել Նաբուգոդոնոսոր
արքայ Բաբելացւոց. և կապեաց զնա
պղնձի կապանօք. և տարաւ զնա ՚ի Բա-
բելոն։ 41 *Եւ ՚ի սպասուէ տանն Տն
եառ Նաբուգոդոնոսոր. և տարաւ եդ
՚ի պաշտօնատեղի ՚ի տան կռոց իւրոց ՚ի Բա-
բելոն։ 42 *Այս ամենայն վասն նորա՝ և
վն պղծութեց նր և անօրէնութեց
գրեալ է ՚ի գիրս ժամանակաց թա-
գաւորացն։ 43 *Եւ թագաւորեաց փո-
խանակ նորա Յովակիմ որդի նորա.
որ էր ամաց ութուտասնից։ 44 *Եւ թա-
գաւորեաց ամիս երիս. և աւուրս տասն
յԵրուսաղէմ. և արար չար առաջի
Տն։ 45 *Եւ զհետ ամի միոյ առաքեաց Նա-
բուգոդոնոսոր. և տարաւ զնա ՚ի Բա-
բելոն Հանդերձ գանձիւ տանն Տն։
46 *Եւ կացոյց զսեդեկիայ թագաւոր
՚ի վերայ Հրէաստանի և Եէմի. և էր
սեդեկիա ամաց քսան և միոյ. և թա-
գաւորեաց ամս մետասան։ 47 *Եւ ա-
րար չար առաջի Տն. ‖ և ոչ դարձաւ
՚ի չարեաց իւրոց. և ոչ լուաւ բանից
Երեմիայի մարգարէի. զոր խօսեցաւ
ընդ նմա ՚ի բերանոյ Տն։ 48 *Եւ զեր-
դումն, զոր երդուաւ Նաբուգոդոնո-
սորայ արքայի անուամբ Տն. ոչ եկաց
յերդմանն. այլ ստեաց. և հեռացաւ
՚ի Նաբուգոդոնոսորայ. և խստացոյց
զպարանոց և զսիրտ իւր յօրինաց Տն
Այ Իսրայէլի։ 49 *Եւ իշխանք ժողովր-
դեանն. և քահանայք բազում ամբար-
շտութիս արարին. և անօրինեցան.
և բազմացուցին զպղծութիս իւրեանց
քան զամենայն հեթանոսս. և պղծե-
ցին զտաճարն սրբութե Տն յԵրու-
սաղէմ։ 50 *Եւ առաքեաց Այ Հարցն
նոցա զհրեշտակս և զմարգարէս իւր
առ նոսա. զի դարձցին. վն զի խնայ-
էր ՚ի նոսա. և ՚ի տաճարն սրբութե
իւրոյ։ 51 *Եւ արհամարհեցին զհրեշ-
տակս նորա. և յաւուր յորում խօսէր
ընդ նս Տր. կատակէին և ծաղր առ-
նէին զմարգարէս նր։ 52 *Եւ ցասեաւ
Տր ՚ի վերայ ազգին նոցա. և վասն
ամպարշտութե նց եած ՚ի վերայ նց
զթագաւորսն Քաղդեացւոց։ 53 *Եւ
նոքա սպանին զերիտասարդս նոցա
սրով. և հեղին զարիւնս նց շուրջ
զսրբութե տաճարաւն. և ոչ խնայե-
ցին ՚ի մանկունս և ՚ի կուսանս, ՚ի ծերս
և յերիտասարդս նոցա։ 54 *Այլ զայս
ամ ետ ՚ի ձեռս նց. և զամենայն սպաս
տանն Տն զմեծ և զփոքր. և զկիւ. և
զսպաս տապանակին Տն. և զգանձս
թագաւորին իմի. զամենայն առեալ
տարան ՚ի Բաբելոն։ 55 *Եւ հրկէզ
արարին զտաճարն Տն. և քակեալ
քանդեցին զպարիսպն Երուսաղեմի.
և զաշտարակս նր հրկիզեցին հրով։
56 *Եւ եղև վախճան ամենայն փառաց
նորա. և զմնացեալսն վարեալ առաջի
սրոյ. 57 գերեցին ՚ի Բաբելոն։ *‖ Եւ
եղեն ՚ի ծառայութ ՚ի նոցա. և որդւոց
նոցա մինչև ՚ի թագաւորս պարսից. ՚ի
կատարել բանին Տն. զոր խօսեցաւ
՚ի բերան Երեմիայի մարգարէի։
58 *Մինչև հաճեսցի Տր ընդ երկիրն
դատարկացեալ՝ շաբաթացոյց զնա՝
և զամենայն ժամանակս, զոր եղև ա-
նապատ. հանգուցեալ նմա ՚ի շաբա-
թումն. մինչև կատարեաց ամն եօթա-
նասուն և եօթն (յառաջնում ամի
թագաւորութեն կիւրոսի եօթանա-
սուն ամ գերութեն կատարիւր յու-
դայ և բենիամինի. և ընդ ամենայն
թագաւորեաց կիւրոս ամն երեսուն։)

## Գլ. Բ.

1 Եւ ‖ ՚ի թագաւորութեն կիւրոսի
պարսից յառաջնումն. կատա-
րեցաւ բանն Տն. զոր խօսեցաւ ՚ի բե-
2 րան Երեմիայի մարգարէի։ *Եւ յա-
րոյց Տր զոգի կիւրոսի թագաւորին
պարսից. և հրամայեաց կիւրոս յա-
մենայնի թագաւորութե իւրում քա-
3 րոզ կարդալ՝ և ասել. *Այսպէս ասէ
թագաւորն պարսից կիւրոս. ինձ
յայտնեաց թագաւորն ամ տիեզե-
րաց Տր Այ իմի. Տր բարձրեալ.
4 *Եւ նշանակեալ յայտնեաց ինձ. շի-
նել նմա տաճար յԵրուսաղէմ Հրէաս-
5 տանի։ *Արդ՝ ո որ և իցէ. և կայցէ
առ նմա յազգացն հրէից. և Տր Այ
ելիցէ ը նմա. և ելեալ յԵրուսաղէմ ը
հրէայսն շինեսցէ զտաճարն Տն Այ
իմի։ այս է Տր. որ բնակի յԵրուսա-
6 ղէմ։ *Եւ ամենայն որ. որ յիւրաքան-
չիւր տեղիս բնակեալ են, օգնեսցեն
նոցա

Երեմ. 38. 21.

Երեմ. 25. 11. և 29. 10

2. Մն. 36. 22. 2. Եզր. 1. 1.

նոցա ոսկւով. և արծաթով։ 7 *Ձիովք և ամ խաշամբք. և ամ կազմածով իւրեանց նուիրեսցին 'ի տաճարն Տն Այ յէմ։ 8 *Եւ կացցեն իշխանք ազգացն՝ և հայրապետաց ազգին յուդայ. և ցեղին բենիամինի. և քահանայիցն. և ղեւտացւոցն. և ամենեցուն, զորոց զարթոյց Տր զոգիս նոցա, ելանել և շինել զտունն Տն յերուսաղէմ. և շուրջ զնոքօք։ 9 *Օգնեսցեն ամենքեան արծաթով և ոսկւով. ձիովք և խաշամբք. ուխտեսցեն Տն. որչափ և 'ի միտս իւրեանց անկցի։ 10 *Եւ թագաւորն կիւրոս ետ բերել զսուրբ սպասն Տն. զոր բերեալ էր նաբուգոդոնոսորայ յերուսաղէմէ. և եդեալ էր 'ի պահ 'ի տան կռոցն իւրոյ։ 11 *Եւ բերել կիւրոս թագաւոր պարսից. և հրամայեաց տալ զսպասն միթրիդատայ գանձաւորի իւրոյ։ 12 *Եւ հանեալ միթրիդատայ ետ ցսաղմանասար հանդերձապետ յուդայ։

13 *Եւ այս էր թիւ սպասու կահուն Տն. սպաս ոսկեղէն հազար. և սպաս արծաթի էր հազար. խբարդեայք արծաթիք քսանևինն. և սփսիայք ոսկիք երեսուն. և արծաթիք երկու հազար չորեքհարիւր և քսան. և այլ կահ հազար։ 14 *Եւ ամենայն կահն. զոր բերին ոսկի և արծաթի. հինգ հազար չորեքհարիւր վաթսունևինն։ 15 *Եւ տարեալ զայս ամ 'ի ձեռս սաղմանասարայ՝ առեալ հանդերձ ամ գերութե հանէին 'ի բաբիլոնէ յերուսաղէմ։ 16 *Ի ժամանակս թագաւորութեն արտաշէսի պարսից արքային, գրեցին առ նա. որք բնակեալ էին շուրջ զհրէաստանիւ և զեէմաւ. բաղսամոս. և միթրիդատ. և բղլիոս. և հռաթիմոս, և բեղտեթիմոս. և սամեղիոս գրիչ. և այլ ևս բազումք ընդ նոսա. որք բնակեալ էին առ ծովեզերբն. քանանացիք. և տիւրացիք. ամոնացիք. և մովաբացիք. և շամիրտացիք. և այլք բազումք տեղակալք. գրեցին թուղթ զայս օրինակ։ 17 *Թագաւոր արտաշէս՝ տէր մեր. ծառայք քո. հռաթիմոս. որ երկրապահ է քեզ. և սամեղիոս գրիչ. և ամ խորհրդակիցք մեր. և դատաւորք կողմանցն ասորւոց, և քանանացւոց։ 18 *Արդ այժմ գիտուն լիցի քեզ տէր մեր և թագաւոր, զի հրէիցն՝ որք ելին 'ի ձէնջ առ մեզ երթալ յէմ 'ի քաղաքն ապստամբօղ և դառնացօղ. և շինեն զնա. և զհրապարակս նորա. և զպարիսպս նր կամին ամրացուցանել. և զտաճար նր կամին բարձրաբերձ շինել։ 19 *Արդ եթէ զքաղաքս զայս շինեսցեն. և պարիսպս նորա կատարեսցեն. հարկս ումեք ոչ հարկանեն. այլ և թագաւորաց ևս ընդդէմ կան։ 20 *Վասնզի պանծացեալ յուսան 'ի տաճարն իւրեանց. արդ բարւոք թուէր ցաւ մեզ. եթէ փոյթ արասցես այսմ իրաց։ 21 *Տէր մեր թագաւոր. և փորձեալ տեսցես. զոր գրեցին հարքն քո, և նախնիք։ 22 *Եւ գտցես զգիր յիշատակարանաց. և գիտասցես. եթէ քաղաքս այս ապստամբօղ է. և թագաւորք սորա։ 23 *Եւ հրէայք ապստամբօղք. և ստերդմունք բնակիչք սորա յաւիտեան. վն որոյ և քաղաքս այս աւերեալ անապատ եղև։ 24 *Արդ ցուցանեմք տեառն մերոյ և թագաւորի. եթէ քաղաքս այս շինեսցի. և պարիսպք սորա կանգնեսցին. քո իշխանութի և ճանապարհ 'ի կողմանս ասորւոց և քանանացւոց ոչ ևս լինի։

25 *Յայնժամ գրեաց արտաշէս թագաւոր, հռաթիմու. և բեղտեթմու և սամեղի գրչի և այլոց ամենեցուն. որք բնակեալ էին 'ի կողմանս սամարիայ. և ասորւոց. և քանանացւոց. որք գրեցին առ նա։ 26 *Կարդացի ասէ զթուղթն ձեր. զոր գրեցիք առ իս. և հրամայեցի տեսանել 'ի մատեանս յիշատակարանաց. և գտաւ քաղաքդ այդ յիկզբանցն և 'ի յաւիտենից՝ ընդդէմ ամ թագաւորաց։ 27 *Եւ երկնային պատերազմօղք ընդ ամենայն կողմանս. որք բնակեալ էին 'ի դմա. և թագաւորք զօրաւորք և խիստք. որք բնակեալ էին յէմ. տիրացեալ հարկս հարկանէին 'ի կողմանցն ասորւոց և քանանացւոց։ 28 *Արդ այժմ հրամայեցի արգելուլ զարսդ զայդոսիկ 'ի շինելոյ զքաղաքդ. և դուք փոյթ յանձին կալարուք։ 29 *Զի մի ևս առաւելեսցի չարութի դոցա. և ընդդիմասցին. և աշխատեցուսցեն զթագաւորութիս մեր։ 30 *Եւ յայնժամ կարդացեալ զգիր թագաւորին արտաշէսի. հռաթիմոս. և սամեղ գրիչ. և այլ բազումք ընդ նոսա. ելին փութով յէմ երիվարօք և զօրօք հանդերձ։ 31 *Եւ արգելին զհրէայսն 'ի շինելոյ. և խափանեցաւ շինուած տաճարին Տն յերուսաղէմ. մինչև յերկրորդ ամ թագաւորութեն դարեհի պարսից արքայի։

Margin: 5479 — Ա. Եզր. 4. 6.

## ԳԼ. Գ.

1 Եւ թագաւորն դարեհ արար խրախութի մեծ. և ժողովեաց զամ իշխանս իւր. և զընտանիս իւր. և

զա̃մ մեծամեծս Մարաց • պարսից • և
քաղաքացւոց: 2 *Եւ զա̃մ նախարարս
և զզօրագլուխս • և զտեղակալս ընդ
նոսա ’ի կողմանցն հնդկաց, մինչև ’ի
կողմանս եթեւոպացւոց • և էին նախա
րարք հարիւր քսան և եօթն: 3 *Եւ կե
րին • և արբին • և յագեցան • և ուրախ
եղեն • և յորժամ վախճան եղև • Դա_
րեհ թագաւորն եմուտ ’ի սենեակ իւր •
և ելեալ ’ի գահոյս իւր ’ի քուն եղև:
4 *Յայնժամ երեք պատանիք • որք էին
սենեկապանք նորա • և մինչդեռ ’ի
քուն կայր թագաւորն • նոքա ’ի ներքս
’ի սենեկի սպաս կալեալ և պահ ու_
նէին նմա • խօսիլ սկսան ը̃ միմեանս •
և ասեն: 5 *Եկայք իւրաքանչիւր
ոք ասասցուք բան մի • և որ ասասցէ
իմաստուն և առաւել զօրաւոր քան
զընկերս իւր • տացէ նմա Դարեհ թա
գաւոր պարգևս մեծամեծս • (և մեծ
և անուանի երևեսցի քան զամենե_
սեան: ) 6 *Եւ ծիրանիս զգեցուսցէ
նմա • և ոսկի սպասուք արբցէ՝ և կե_
րիցէ • և ’ի վ̃ր ոսկեղինաց նստցի • և
ննջեսցէ • և վարեսցէ երիվարս ոսկե
սանձս • և խոյր բեհեզեայ թագ կա_
պեսցէ նմա • և մանեակ ոսկի ’ի պարա
նոցի ն̃ր: 7 *Եւ յերկրորդ աթոռն Դա
րեհի նստցի վասն իմաստութե̃ իւրոյ •
և ազգական Դարեհի անուանեսցի:
8 *Եւ յայնժամ իւրաքանչիւրոք գրեալ
զիւր բան • կնքեցին, և եդին ը̃ սնարս
Դարեհի արքայի: 9 *Եւ ասեն՝ յոր_
ժամ յարիցէ, տացուք ցնա զգիրդ • և
ընտրեսցէ թագաւորն՝ և երեք մե_
ծամեծք իշխանք պարսից • և որոյ դա
ջի բան իմաստնագոյն • նմա տացեն
զյաղթողական պարգևն: 10 *Եւ գրեաց
առաջինն • և ասէ՝ յաղթող և զօրաւ
որ է քան զա̃մ գինի: 11 *Եւ գրեաց
երկրորդն • և ասէ՝ յաղթող և զօրաւոր
է քան զամենայն թագաւոր: 12 *Եւ
երրորդն գրեաց • և ասէ՝ յաղթող և
զօրաւորք են քան զա̃մ կանայք • և
քան զամենայն յաղթէ ճշմարտութի̃ն:
13 *Եւ յորժամ զարթեաւ թագաւորն
առեալ զգիրն • զոր ետուն ցնա • կար
դաց: 14 *Եւ առաքեալ կոչեաց զա_
մենայն մեծամեծս պարսից և մա_
րաց • և զնախարարս • և զսպարա_
պետս • և զտեղակալս • և զիշխանս:
15 *Եւ նստեալ ’ի տեղւոջ յայտորելի • [խորհր_ դեան]
և կարդացին զգիրն առաջի ամենե_
ցուն: 16 *Եւ ասէ թագաւորն • կոչե
ցէք այսր զպատանիսն • և նոքա մեկ_
նեսցեն զբանս իւրեանց • և կոչեց_
եալք մտին առաջի: 17 *Եւ ասեն ցնո̃ •
ամենեքեան պատմեցէք մեզ զգր_
եալդ • և սկսաւ առաջինն • որ ա_
սացն վ̃ս զօրութե̃ գինւոյ: 18 *Եւ ասէ
այսպէս • ո՛վ արք • զիա՞րդ ոչ է զօրաւոր
գինի • զի ա̃մ մարդիկք • որք ըմպեն
զնա՝ յիմարեցուցանէ զմիտս: 19 *Եւ
զթագաւորաց՝ և զտառապելոց մի
միտս առնէ • նոյնպէս զտեառն և
զծառայի • զմեծատանց և զաղքա_
տաց: 20 *Եւ զամենեցուն միտս դար_
ձուցանէ • և շրջէ յուրախութի̃ • և
ոչ երբեք յիշէն զտրտմութի̃ և զախ_
տս ինչ: 21 *Քանզի զամենեցուն
սիրտս լնու զուարթութեամբ և մե_
ծութե̃ք: 22 *Եւ ոչ յիշէ զթագաւորս
կամ զիշխանս • և տայ խօսիլ զ̃մեծա_
մեծս: և յորժամ ըմպէ • ոչ յիշէ զսի_
րելիս • և զեղբարս • և զթշնամիս • և
բազումանգամ հանեալ սուր: 23 *Եւ [հանէ]
յորժամ թափի գինին • ոչ յիշէ զինչ
գործեացն: 24 *Ո՛վ արք • զիա՞րդ ոչ է զօ
րաւոր գինի • որ զայս ամենայն բռնա
դատէ գործել • և ասացեալ զայս ամե
նայն՝ լռեաց:

## ԳԼ: Դ:

1 Եւ սկսաւ խօսիլ երկրորդն • որ
ասացն վ̃ս զօրութե̃ թագաւո_
րի: 2 *Ո՛վ արք • ոչ ապաքէն զօրացեալ
են մարդիկք • և ունին զծով և զցա
մաք, և զամենայն ինչ՝ որ է ’ի նոսա:
3 *Իսկ թագաւոր զօրացեալ տիրէ ա̃մ
երկրի՝ և մարդկան • և զորինչ ասէ՝ և
հրամայէ՝ վաղվաղակի առնեն • (եթէ
հրամայէ պատերազմիլ ընկեր ընդ ըն
կերի իւրում, ոչ իշխեն անցանել զբա
նիւ: ) 4 *Եւ եթէ առաքէ զնոսա ’ի
պատերազմ ը̃ թշնամիս • երթեալ
վաղվաղակի գործեն մեքենայս • և լե
րինս • և պարիսպս • և աշտարակս:
5 *Սպանանեն, և մեռանին • և զհրա_
մանաւ թագաւորին ոչ կարեն անցա
նել • և եթէ յաղթեսցեն, զամենայն
բարութիս բերեն թագաւորին:
6 *Եւ ոչ միայն զօրականք պատերազ
մօղք • այլև մշակք՝ որք գործեն զեր
կիր • յորժամ սերմանեն՝ և հնձեն • զար
դիւնս իւրեանց բերեն թագաւորին:
և հարկահանք դարձեալ բռնադա_
տեալ զաշխարհ, հանեն հարկս թա
գաւորի: 7 *Եւ թագաւոր միայն զօ_
րացեալ իշխանէ ’ի վ̃ր ա̃մ • եթէ հրա
մայէ սպանանել՝ սպանանեն • և եթէ
կեցուցանել՝ կեցուցանեն: 8 *Եւ եթէ
շինել՝ շինեն: 9 *Եւ եթէ քակել՝ քա_
կեն • և եթէ տնկել՝ տնկեն: 10 *Եւ ա̃մ
աշխարհ թագաւորի զօրութե̃ և հրա
մանի լսեն • և ինքն արքայ զինչ և կա
մի գործէ • և ինքն ’ի հանգստեան կայ
բազմի •

բազմի. ուտէ. և ըմպէ. և 'ի քուն
մտանէ։ * Եւ այլք ամենեքեան շուրջ 11
պահեն զնա. և հրամանի նր անսան.
և ոչ իշխեն ոք կամս իւրեանց երթալ
ուրեք. և կամ գործել. և ոչ իշխեն
անցանել զհրամանաւ թագաւորի։
* Արդ ո՛ արք. զիա՞րդ ոչ զօրաւոր է 12
թագաւոր. որոյ քան հրամանի իւրոյ
այսչափ զօրացեալ իշխէ 'ի վերայ ա_
մենեցունց. և զայս ասացեալ՝ լռեաց։
* Եւ երրորդն. որ ասաց վասն զօրու_ 13
թեան կանանց. և վն ճշմարտութե. այս
է զօրաբաբէլ. սկսաւ խօսիլ՝ և ասէ։
* Արք. եթէ մեծ է թագաւոր. և 14
կամ այլ բազում մարդիկ. և կամ զօ_
րաւոր է գինի. ո՛ է, որ յաղթեալ ունի.
և տիրէ 'ի վր ամենեցուն։ * Ոչ ապա 15
քէն կանայք. քանզի կանայք են՝ որք
ծնան զթագաւորս. և ամ մարդիկ՝ որք
տիրեն ծովու և ցամաքի, * 'Ի նոցա 16
նէ ծնան։ և նոքա ծնան՝ և սնուցին
զմշակս. որք տնկեն զայգիս. ուստի
լինի գինի։ * Եւ նոքա են. որք առ_ 17
նեն զհանդերձս արանց. և նոքօք զար
դարին՝ և փառաւորին մարդիկ. և ոչ
է հնար առանց նոցա լինել մարդկան։
* Եւ եթէ ժողովեսցեն զոսկի՝ և զար 18
ծաթ՝ և զամենայն բարութիւն. և տե
սեալ կին մի գեղեցիկ։ * Դարձեալ 19
'ի նա՝ և բերանաբաց եղեալ հային
ընդ նա. և ամենայն կամօք իւրեանց
սիրեն զնա առաւել քան զոսկի՝ և
քան զարծաթ՝ և քան զամ բարու_
թիւն։ * Եւ թողեալ զհայր՝ և զմայր 20
իւր. որք ծնան, և սնուցին զնա. և զաշ_
խարհ իւր. և երթայ զհետ կնոջ իւրոյ։
* Եւ այնպէս միացեալ ողեխառնի 21
ընդ նմա. մինչև ոչ յիշէ զհայր իւր.
և ոչ զմայր. և ոչ զաշխարհ։ * Եւ 22
յայսմանէ արժան է ձեզ գիտել. թէ
տիրեն 'ի վերայ ձեր կանայք ձեր. զի
զամենայն ինչ՝ զոր գործէք՝ և աշխա_
տիք. բերէք՝ և տայք ցկանայս ձեր։
* Եւ առեալ առն զսուր իւր. գնայ 'ի 23
ճանապարհ հեռի։ և եթէ շահի ինչ.
կամ աւազակէ՝ և գողանայ. և կամ ընդ
ծով և ընդ գետս նաւէ։ * Եւ գա_ 24
զանաց պատահի. և ընդ խաւարուտ
գնայ. և յորժամ գողանայ՝ և յափշտա
կէ՝ և ընդ ամ վիշտս անցանէ. դայ՝
և բերէ զամ վաստակսն առ կին իւր։
* Քանզի առաւել սիրէ մարդ զկին 25
իւր քան զհայր իւր. և զմայր իւր։
* Եւ բազումք յիմարեցան 'ի միտս 26
իւրեանց. և վասն կանանց իւրեանց
անկան 'ի ծառայութիւն։ * Եւ բա_ 27
զումք 'ի կորուստ մատնեցան. և մե_
ռան՝ և սպանին. և սխալեալ անկան
'ի մեծամեծ մեղս վասն կանանց։
28 * Եւ այժմ ոչ հաւատայք ինձ։ ոչ
մեծ թագաւորդ անձնիշխան է ինքն.
և ամենք 'ի մարդկանէ ոչ իշխէ մերձե
29 նալ 'ի դա։ * Տեսանէի ես զապէմէն
զդուստր հարճի թագաւորին. զի
30 նստէր ընդ աջմէ թագաւորին։ * Եւ
առեալ զթագն 'ի գլխոյ դորա՝ դնէր
'ի գլուխ իւր. և ածեալ ապտակ թա
31 գաւորին։ * Եւ առ այս թագաւորդ
ո՛չինչ ցասնոյր. այլ բացեալ զբերան
իւր հայէր ընդդէմ նորա. և եթէ
ծիծաղէր. ծիծաղէր ընդդէմ նորա.
և եթէ տրտմէր՝ թագաւորդ ողոքէր.
32 մինչև սթափեցուսցէ զնա։ * Արդ ո՛
արք. զիա՞րդ ոչ են զօրաւոր կանայք՝
33 որք զայս ամ առնեն։ * Եւ յայնժամ
թագաւորն և մեծամեծք նր սկսան
հայիլ այր ընդ ընկեր իւր։ և սկսաւ
խօսիլ զօրաբաբէլ վասն ճշմարտու_
34 թե՝ և ասէ։ * Արք. ոչ ապաքէն
զօրաւորք են կանայք. մեծ է երկիր.
բարձր են երկինք. և երագընթաց է
արեգակն. վասն զի ունի արշաւանս
ընդ կամարաձև խորանն երկնից։ և
դարձեալ վաղվաղակի սլացեալ հա
սանի 'ի տեղի իւր 'ի միում աւուր։
35 * Ոչ ապաքէն մեծ է այն՝ որ զայս ամ
արար. արդարև ճշմարտութի մեծ է՝
և զօրաւոր է քան զամենեսեան։
36 * Ամենայն երկիր ապաւինի 'ի ճշմար
տութի։ և երկինք օրհնեն զճշմարտու
թի. և ամ գործք շարժին՝ և դողան
առաջի նորա. և ոչ է 'ի ճշմարտութե
37 անիրաւութի. և ոչ մի։ * Անիրաւ է
գինի. անիրաւ է և թագաւոր. անի_
րաւք են և կանայք. անիրաւք են և
ամ որդիք մարդկան. անիրաւք են և
գործք նց. և ոչ գոյ 'ի նոսա ճշմար_
տութի. և յանիրաւութե իւրեանց
38 կորնչին։ * Իսկ ճշմարտութի կայ՝
և մնայ. և զօրաւոր է յաւիտեանս. և
կենդանի է. և ունի զիշխանութիւն
39 յաւիտեանս յաւիտենից։ * Եւ ոչ գոյ
'ի նմա ակնառութի. և ոչ երբէք փո
փոխի. այլ իրաւունս առնէ. և մեր_
ժեալ է 'ի նմանէ անիրաւութի և չա
րութի. և ամ գործք ճշմարտութե
40 հաճոյք են ամենեցուն։ * Եւ ոչ գոյ
'ի դատաստանի նորա անիրաւութի.
քանզի ճշմարտութի է զօրութի թա
գաւորաց. և իշխանութի և մեծու_
թի։ և է օրհնեալ Տր Ած ճշմարտու
41 թե։ * Եւ ասացեալ զայս՝ լռեաց 'ի
խօսելոյն։ և ամ ժողովն յայնժամ մե
ծաձայն աղաղակեցին՝ և ասեն. մեծ է
ճշմարտութի. և յաղթող է՝ և զօրաւոր։
42 * Յայնժամ թագաւորն ասէ ցնա։
խնդ_

խնդրեա զինչ և կամիս. և տաց ևս առաւել քան զգրեալդ։ վն զի գտար իմաստուն քան զամենեսեան։ և երկրորդ յաթոռ իմ նստջիր. և ազգական իմ անուանեսջիր։ 43 *Յայնժամ ասէ զօրաբաբէլ ցթագաւորն. յիշեա զուխտն. զոր ուխտեցեր վն շինուածոյն եմի. յաւուր յորում առեր դու զթագաւորութիւդ քո. և ասացեր։ 44 *Զամ կահ և սպաս եմի դարձուցանել անդրէն. զոր որոշեալ մեկնեաց կիւրոս. յորժամ եհար զբաբիլոն. և ուխտեաց նա դարձուցանել զսպասն Տն։ 45 *Նոյնպէս և դու թագաւոր, ուխտեցեր շինել զտաճարն Տն. զոր այրեցին եդոմայեցիքն. յորժամ աւարին անապատ զհրէաստան քաղդեացիքն։ 46 *Եւ այժմ աղաչեմ զքեզ տէր իմ և թագաւոր. և խնդրեմ 'ի քէն։ և զայս մեծ պարգև շնորհեա դու ինձ. և վասն այնորիկ աղաչեմ զքեզ. կատարեա զուխտն. զոր ուխտեցեր թագաւորին երկնաւորի. արա ըստ այնմ. որպէս և ել 'ի բերանոյ քումմէ։ 47 *Յայնժամ յարուցեալ դարեհ թագաւոր համբուրեաց զզօրաբաբէլ։ և գրեաց նմա թուղթս առ ամենայն գաւառապետս. և տեղակալս. և զօրագլուխս. և առ նախարարս, զի յուղարկեսցեն զնա և որք ընդ նմայն էին. ելանել և շինել զեմ։ 48 *Եւ առ ամ տեղակալս կողմանցն ասորւոց, և փիւնիկեցւոց. և որք են 'ի կողմանս լիբանանու՝ գրեաց թուղթ. զի իջուսցեն զմայր փայտս 'ի լիբանանէ յեմ. և շինեսցեն հան դերձ զօրաբաբիլիւ զքաղաքն։ 49 *Եւ գրեաց առ ամ հրէայս. որք ելանէին 'ի թագաւորութենէն իւրում. և ազատեաց զնոսա 'ի հարկաց։ և ասէ ցամ զօրաւորս՝ և նախարարս. և տեղակալս. և գաւառապետս. մի ոք վասն հարկաց մերձեսցի 'ի դուրս նց։ 50 *Եւ ամ տեղի. զոր և ունին՝ անհարկ և ազատ լիցի։ և ամ եդոմայեցիք տայցեն 'ի բաց զգեօղս և զտեղիս. զոր ունէին զհրէից։ 51 *Եւ 'ի շինուած տաճարին տայցեն յարքունուստ. յամի քանք տաղանդ. մինչև շինեսցի տաճարն։ 52 *Եւ 'ի սեղան ողջակիզացն տայցեն զամ աւուր. որպ և գրեալ էր յօրէնսն. զեօթներորդս և զտասանորդս անխափան մատուցանել։ և այլևս տաղանդս տասն ամ յամի։ 53 *Եւ ամենեքեան. որք ելանեն յեմ. շինեսցեն զքաղաքն. և լիցին ազատք և առանց հարկաց. ինքեանք՝ և ազգք իւրեանց. և ամ քահանայքն։ 54 *Եւ հրամայեաց գրել և տալ զամ դարման. և զպատմուճան քահանայիցն. որով կատարէին զպաշտօնն Տն։ 55 *Եւ ղևտացւոցն գրեաց տալ ռոճիկ զաւուրս. մինչև կատարեսցի տաճարն Տն. և եմ շինեսցի։ 56 *Եւ ամենեցուն՝ ոյք պահէին զքաղաքն. գրեաց տալ նց ժառանգութի երկրի՝ և ռոճիկս։ 57 *Եւ առաքեաց զամ կահ և զսպաս տաճարին. զոր որոշեաց կիւրոս 'ի բաբիլոնէ. և զամ զորինչ ասաց կիւրոս. դարեհ զնոյն արար՝ և կատարեաց. և ետ տանել զամ սպասսն Տն։ 58 *Եւ յորժամ ել արտաքս 'ի թագաւորէն զօրաբաբէլ, համբարձ զձեռս իւր յերկինս ը կողմն եմի. և օրհնեաց զՏր զթագաւոր երկնից։ 59 *Եւ ասէ՝ 'ի քէն է յաղթութի. և 'ի քէն է իմաստութի. և քեզ վայելէն փառք. և ես ծառայ քո եմ։ 60 *Եւ օրհնեմ զքեզ. որ ետուր ինձ զիմաստութի. և գոհանամ զքէն Տր հարցն մերոց։ 61 *Եւ էառ զթուղթսն՝ և գնաց։ և եկն՝ և եմուտ 'ի բաբիլոն. և պատմեաց զամ եղբարց իւրոց։ 62 *Եւ օրհնեցին զՏր հարցն իւրեանց. վն զի շնորհեաց նց ընդարձակութի. և արար թողութի։ 63 *Ելանել՝ և շինել զեմ. և զտաճարն Տն. յորում անուանեցաւ անուն նր 'ի նմա. և արարին ուրախութի մեծ հանդերձ ամ նուագարանօք զաւուրս եօթն։

## Գլ: Ե.

1 Եւ զհետ այսր ամենայնի. ընտրեցին զնահապետս և զառաջնորդս տանց՝ և ազգաց՝ և ցեղից՝ ելանել յերուսաղէմ հանդերձ կանամբք իւրեանց՝ և որդւովք և դստերօք՝ և ծառայիւք՝ և ամ կահիւ և կազմածով իւրեանց։ 2 *Եւ դարեհ առաքեաց ը նոս ձիս հազարս. մինչև երթեալ հասանիցեն յեմ խաղաղութբ. և հանդերձ նուագարանօք՝ թմբկաւ՝ և փողով։ 3 *Եւ պարու՝ և ամ ուրախութբ արձակեաց զնոսա յերուսաղէմ։ 4 *Եւ այս անուանք են արանց. որք ելին յեմ ըստ անուանց հարց իւրեանց. ըստ ցեղս տոհմից իւրեանց։ 5 *Ի քահանայիցն էին որդիք փենեհեզի, որդւոյ ահարոնի՝ յեսու յովսեդեկեանց՝ և յովակիմ, որ և զօրաբաբէլ սաղաթիելեանց, յազգէն դաւթայ 'ի տոհմէն փարեսեանց, 'ի ցեղէն յուդայ։ 6 *Որ և խօսեցաւ առաջի դարեհի արքայի զբանս իմաստութն յերկրորդ ամի թագաւորութն նր՝ յամսեանն նիսան յամսեանն առաջնում։

*Էին

7 * Սոքա ամենեքեան հրէայք. որք արձակեալք ՚ի գերութենէն ելին յերուսաղէմ. որք էին գերեալք ՚ի նաբուգոդոնոսորայ արքայէն բաբիլացւոց. և եկեալք յերուսաղէմ:

8 * Ծանուցեալ ՚ի հրէաստանի յիւրաքանչիւր քաղաքս. և էին առաջնորդք նց. զորաբաբէլ, և յեսու յովսեդեկեանց. և էին յայգէ քահանայիցն. նէեմի. զարեհ. հռեսէ. անանիա. մուրդքէ. բեեղսար. ասփարասս. բորոել. հռուխէ. բաանա:

9 * Եւ այսոքիկ են թիւք նահապետաց ազգացն. և իշխանք նոցա. որդիք փորոսայ. երկու հազարք և հարիւր և եօթանասուն և երկու: * Որդիք սափատայ չորս հարիւր եօթանասուն և երկու:

10 * Որդիք արեսայ եօթն հարիւր և եօթանասուն և վեց:

11 * Որդիք նեփթաղիմի մովաբացւոց. և որդւոց յեսուայ և հռոբայ. երկու հազարք ութն հարիւր և երկոտասան:

12 * Որդիք յեղամայ երկու հազարք երկերիւր յիսուն և չորք. որդիք զատնայ ինն հարիւր քառասուն և հինգ: որդիք քորբեայ. եօթն հարիւր և յիսուն. որդիք բանիայ վեց հարիւր քառասուն և ութն:

13 * Որդիք բերեայ վեց հարիւր քսան և երեք. որդիք արգեայ երեք հազարք երեք հարիւր քսան և երկու:

14 * Որդիք ադոնիկամայ վեց հարիւր և եօթանասուն և եօթն: որդիք բոսորեայ երկու հազարք վեց հարիւր և վեց: որդիք ադինեայ չորեք հարիւր յիսուն և չորք:

15 * Որդիք ազեբեղեկիայ, իննսուն և երկու: որդիք բիղանայ վաթսուն և եօթն. որդիք ազարայ չորեք հարիւր երեսուն և երկու:

16 * Որդիք դերդաղեայ վեց հարիւր երեսուն և երկու. որդիք անանիայ հարիւր և քսան. որդիք արոմայ երեք հարիւր քսան և երեք:

17 * Որդիք արսիփուրայ հարիւր և երկոտասան. որդիք բետերեայ երեք հազարք իննսուն և հինգ: որդիք բեթղոմայ հարիւր քսան և երեք:

18 * Որդիք նատոբայ յիսուն և հինգ: ՚ի նաթոայ հարիւր յիսուն և ութն. ՚ի բեթսամօթայ քառասուն և երկուք:

19 * Որդիք կարիաթարիմայ քսան և հինգ. ՚ի քափիրայ և թերօնայ եօթն հարիւր քառասուն և ութն. ՚ի քադիասեայ. և ամիդայ. չորեք հարիւր քսան և երկու:

20 * Ի կիմարայ. և կաբեսայ վեց հարիւր քսան և մի: ՚ի մոկամօնայ. հարիւր քսան և երկու:

21 * Ի բետողիմայ յիսուն և երկու: որդիք նեփեսայ հարիւր յիսուն և վեց:

22 * Որդիք կաղամօղայ և ոնիայ եօթն հարիւր քսան և հինգ:

23 * Որդիք յերեքոայ երեք հարիւր քառասուն և հինգ, որդիք սանաասայ երեք հազարք երեք հարիւր երեսուն և մի: Եւ որդիք քահանայիցն:

24 * Որդիք յեդդուայ որդւոյ յեսուայ ինն հարիւր երեսուն և երկու: որդիք եմերայ հազար յիսուն և երկու:

25 * Որդիք փասուրայ հազար երկերիւր քառասուն և եօթն. որդիք քարմեայ հազար և եօթն և տասն:

26 * Եւ ղևտացւոց որդիք յեսուայ մի. և կադոմիլայ. և բանեայ. և սուդիայ. եօթանասուն և չորք:

27 * Եւ որք էին յայգէ քահանայիցն սաղմոսասացք. որդիք ասափայ հարիւր քառասուն և ութն:

28 * Եւ դռնապանք որդիք սաղումեայ. որդիք ատերայ. որդիք տողմնայ. որդիք դակուբայ. որդիք ատերայ. որդիք սաբեայ. ամենեքեան հարիւր երեսուն և ինն:

30 * Եւ ծառայք քահանայիցն. որդիք ասափիայ. որդիք տաբաղայ. որդիք կերայ. որդիք սուայ. որդիք փաղեայ. որդիք ղաբանայ. որդիք ագաբայ. որդիք ագուդայ. որդիք կուտայ. որդիք կետաբայ. որդիք ագաբայ. որդիք սուբայիմայ. որդիք ատանայ. որդիք կաթուայ. որդիք գեղղուրայ:

31 * Որդիք յաբուայ. որդիք գեսանայ. որդիք նաքոբայ. որդիք ասեբայ. որդիք գազերայ. որդիք ոզիայ. որդիք փանեայ. որդիք ասարայ. որդիք բասեայ. որդիք ասանայ. որդիք մոսանայ. որդիք նափիսայ. որդիք ակումայ. որդիք աքիփայ. որդիք ասուրայ. որդիք փարակայ. որդիք փասաղօթայ:

32 * Որդիք դեդանայ. որդիք կութայ. որդիք քարեսայ. որդիք բարկուսայ. որդիք սեսարայ. որդիք թումայ. որդիք նասայ. որդիք ատեփայ:

33 * Որդիք ծառայիցն սաղօմօնի. որդիք սափփիոլթայ. որդիք փարիդայ. որդիք յեեղայ. որդիք ղոզոնայ. որդիք սաեղայ. որդիք սափիայ:

34 * Որդիք ադիայ. որդիք փաքարեայ. որդիք սափիայ. որդիք սարօթայ. որդիք մոսսեայ. որդիք դասասայ. որդիք ադուսայ. որդիք սուփասայ. որդիք ափփերայ. որդիք բարօդեայ. որդիք սափատայ. որդիք ադղօնայ:

35 * Ամենայն ծառայք քահանայիցն. և ծառայք սաղօմօնի. չորս հարիւր եօթանասուն և երկու:

36 * Սոքա էին՝ որք ելեալ էին ՚ի բաբիլոնէ. և թերմաղեթ. և թեղեսիա իշխանք նոցա. և քառաթաղան. և աղղար:

37 * Եւ զայլս ևս ոչ կարաց թուել. ոչ զհազարս. և ոչ զազգս. որք էին յիլէ. որդիք դաղանայ. որդիք տուբանայ. որդիք նեկոդանայ.

վեց

վեց հարիւր յիսուն և երկու ։

Ա2 Եզր. 2.61.

38 *Եւ 'ի քահանայիցն . որք պաշտէին զքահանայութիւն ոչ գտան . որդիք նոդդիայ . որդիք ակբոսայ . որդիք յոդդուսայ . որք առին իւրեանց կանայս 'ի դստերացն բերզելեայ ։ 39 *Եւ կոչեցան յն անուամբ նը . և խնդրեալ զնոսա ոչ գտին յն ազգահամարին 'ի գիրս' 'ի տեղի վիճակին նը ։ և իբրև ոչ գտան յազգահամարին . 'ի բաց որոշեցին զնոսա . և ոչ մտեցին 'ի քահանայութիւն ։ 40 *Եւ ասացին ցնոսա նէեմիա . և ատթարիա . մի մերձենալ 'ի սրբութիւնս' մինչև յարիցէ քահանայապետ որոյ զգեցեալ իցէ զյայտնութիւն և զճշմարտութիւն ։ 41 *Եւ էին ամենայն իէլ յերկոտասանամենից և 'ի վեր . թող զծառայս և զաղախնայս . բիւրք չորք' և երեք հազարք երեք հարիւր և վաթսուն ։ 42 *Ծառայք և աղախնայք նոցա եօթն հազար երեք հարիւր և երեսուն և եօթն . սաղմոսասացք' և պաշտօնեայք երկերիւր քառասուն և հինգ ։ 43 *Ուղտք չորեքհարիւր երեսուն և հինգ' և ձիք եօթն հազար քառասուն և վեց . և ջորիք երկերիւր հազար քառասուն և հինգ ։ էշք հինգ հազար հինգ հարիւր քսան և հինգ ։

և ջորիք 2045

44 *Եւ իշխանք ըստ հայրապետացն իւրեանց եկեալ մինն 'ի տեղի տաճարին Այ . որ երյերուսաղէմ . և եդեալ ուխտս զի կանգնեսցեն տաճարն 'ի տեղւոջ իւրում . և յն կարի իւրեանց ։

զի կանգնեսցեն զտաճարն

45 *Արկանէին 'ի գանձանակ տաճարին 'ի նպաստաւորութի գործոյն . ոսկի հազար մնաս . և արծաթ մնասս հինգ հազար . և պատմուճանս քահանայականս հարիւր ։ 46 *Եւ բնակեցան քահանայքն' և ղևտացիքն' և ժողովուրդքն յէէմ, և 'ի տեղիս նորա . և սաղմոսասաց պաշտօնեայքն . և դռնապանքն . և ամենայն իէլ . 'ի գեօղս և յագարակս իւրեանց ։

Բ2. Եզր 3. 1.

47 *Եւ յարուցեալ յեօթներորդ ամսեանն ամենայն որդիքն իէի յիւրաքանչիւր տեղեաց . ժողովեցան միաբան յընդարձակ տեղին' 'ի դուռնն առաջին' 'ի կողմն արևելից ։ 48 *Եւ կարգեալ յեսու յովսեդեկեանց . և եղբարք նորա և ամենայն բազմութիք քահանայիցն և զօրաբաբել սաղաթիելեանց . և եղբարք նորա . պատրաստեցին սեղան Տն Այ իէի ։ 49 *Մատուցանել 'ի վն նորա ողջակէզս' որպէս և գրեալէ 'ի գիրս մովսէսի առնն Այ ։ 50 *Եւ ժողովեցան նոքա' և որոշեցան յայլոց հեթանոսաց երկրին . և ուղղեցին սեղան զոհարանաց 'ի տեղւոջն իւրում . և թէպէտ էին նը թշնամիք հեթանոսք՝ սակայն լինէին նոցա օգնականք ամ ազգք երկրի . և բերէին նոքա ընծայս և պատարագս՝ ըստ ժամանակս ժամանակս . և ողջակէզս Տն ընդ առաւօտս և ընդ երեկոյս ։

Ղևտ. 23. 34.

51 *Եւ արարին զտօն տաղաւարահարացն . որպէս և գրեալ է յօրէնսն մովսէսի . և մատուցանէին զոհս զօրհանապազ' որպէս և հրամայեալ էր ։ 52 *Եւ յետ այսորիկ մատուցանէին ողջակէզս յն ժամանակս ժամանակս . և զողջակէզս շաբաթուցն . և զամսամտիցն . և զամենայն սուրբ տօնս կարգէին' և կատարէին ։ 53 *Եւ որ ինչ միանգամ ուխտս ուխտէին Այ . յամսամտէն եօթներորդ ամսոյն սկսան մատուցանել զողջակէզս Տն Այ . և տաճարն Տն Այ ոչև ևս էր շինեալ ։ 54 *Եւ ետուն գինս գաղատոսաց . և հիւսանց . և կերակուրս նը ։

յարկեւոր. ծայ

Ա2. Եզր. 3. 7.

55 *Նոյնպէս և սիդոնացւոց . և տիւրացւոց . զի բերիցեն նոքա 'ի լիբանանէ մայր փայտս . և բերեալ նաւօք 'ի նաւահանգիստն յոպպէ . որպէս և հրամայեաց և կարգեաց նոցա յառաջագոյն կիւրոս թագաւորն պարսից ։

Սիրաք. 49.13.

56 *Եւ յամի երկրորդի ելիցն իւրեանց յերուսաղէմ . յամսեանն երկրորդում սկսան շինել զտաճարն . զօրաբաբել սաղաթիելեանց . և յեսու յովսեդեկեանց' և եղբարք նը . և քահանայապետքն և ղևտացիք . և ամենեքեան որք եկեալ էին 'ի գերութենէն յերուսաղէմ ։ 57 *Եւ արկին հիմն տանն Տն Այ յամսամտի , երկրորդի ամսեանն . յերկրորդի ամի ելիցն իւրեանց 'ի հրէաստան և յէէմ ։ 58 *Եւ կարգեցին զղևտացիսն 'ի քսան ամենից և 'ի վեր 'ի գործ սպասու Տն . *Եւ կարգեցան յեսու՝ և որդիք՝ և եղբարք նորա . ( և կադմիէլ եղբայր նորա . և որդիք յեհուդայ բանուն . և որդիք յովիդայ եղիադեանց . ) համ դերձ եղբարբք իւրեանց . ամենայն ղևտացիքն միաբանեալ գործէին ըզ գործ տանն Տն . ( և գաղատոսք շինողք շինեցին զտունն Տն ։ ) 59 *Եւ կարգեցան քահանայապետքն զգեցեալ զպճղնաւորն համդերձ նուագարանօք և փողովք . և ղևտացիքն որդիք ասափայ ունէին զծնծղայսն ։ 60 *Համ դերձ երգօք սաղմոսէին՝ և օրհնէին զԱծ . ըստ և կարգեաց զերգս նուագարանաց դաւիթ թագաւոր իէի ։ 61 *Եւ մեծաձայն օրհնէին և գոհանային զՏր Այ . վն զի բարերարութի Այ և փառք յաւիտեան են յամ իէի ։ 62 *Եւ մեծաձայն ամ ժողովուրդքն հարկանէին զփողսն իւրեանց . և գո

չէին

չէին ձայնիւ մեծաւ. և օրհնէին զՏր. որ կանգնեաց զտաճար իւր սուրբ։ [63] *Եւ եկին՝ և մտին քահանայապետքն ղևտացիք. որք էին գաւհերիցունք. և առաջնորդք ըստ նահապետութեանն հարցն իւրեանց. որոց տեսեալէր զտաճարն յառաջքան զայս շինած։ [64] *Եւ մեծաւ ձայնիւ. և լալով. և բազում փողօք ուրախութե մեծաւ։ [65] *Մինչև չլսէին բազմութին զձայն փողոցն՝ ի ձայնէ լալոյ ժողովրդեանն. զի թէ պէտ էին բազումք. որք հարկանէին զփողսն. որ երթայր ձայնն և՝ ի հեռաւոր ևս տեղիսն։ [66] *Եւ լուան զձայնն թշնամիք ազգին յուդայ՝ և բենիամինի. և եկին ՝ի տեսանել՝ և՝ի գիտել. թէ զինչ է ձայն փողոյն։ [67] *Եւ գիտացին՝ թէ եկեալքն են ՝ի գերութենէ. որք շինեն զտաճար Տն Ի.Ղ Իղի։ [68] *Եւ մատուցեալ առ զօրաբաբէլ և յեսու յովսեդեկեանց. և առ այլ իշխանս հայրապետացն. և ասեն ցնա. և շինեսցուք և մեք ընդ ձեզ զտաճարն Տն։ [69] *Եւ ոչ դուք, նոյնպէս և մեք լուիցուք Տն Ի.Ղ ձերում. քանզի և մեք էաք ցանկացեալ ելից ձերոց. յօրէ յայնմանէ յորմէ գերեաց սամմանասար թագաւորն ասորեստանեայց. և էած՝ և բնակեցոյց զմեզ աստ։ [70] *Եւ ասեն ցնոսա զօրաբաբէլ. և յեսու յովսեդեկեանց. և այլք իշխանք հայրապետացն Իղի. ոչ է մեզ և ձեզ արժան շինել զտուն Տն Ի.Ղ մերոյ։ [71] *Մեք միայն շինեսցուք զտաճարն Տն Ի.Ղ. ըստ որում և հրամայեաց մեզ կիւրոս թագաւոր պարսից։ [72] *Քանզի այս ազգք էին. որք հալածէին ընդ թշնամիս յուդայ. որք արգելուին ՝ի շինելոյ։ [73] *՚Ի ժամանակս կիւրոսի թագաւորի. զի հրամայեաց նա շինել զտաճարն ՝ի կենդանութե իւրում. և յետ մահուան նորա արգելին ամս երկոտասան՝ մինչև յերկրորդ ամն դարեհի։

## Գլ. Զ.

[1] Եւ յերկրորդի ամի դարեհի արքայի մարգարէանային անգէ և զաքարիա. և մարգարէանային ՝ի հրէաստանի և յեմ յանուն Տն Ի.Ղ Իղի։ [2] *Յայնժամ զօրաբաբէլ սաղաթիելեանց. և յեսու յօսեդեկեանց. սկսան շինել զտաճարն Տն յեմ հանդերձ մարգարէիւքն Տն. որք օգնէին նց։ [3] *՚Ի նմին ժամանակի եկին առ նոսա. սիսին իշխան կողմանցն ասորւոց և փիւնիկեցւոց. և սաթրաբուզան. և այլ ընկերք նց։ [4] *Եւ ասեն ցնս. ո՞յր



հրամանաւ շինէք զտաճարդ զայդ. և զարահս դորա. և կամ ո՞յք այնոքիկ իցեն. որք կամիցին զդա շինել՝ և կատարել։ [5] *Եւ եղև շնորհ այցելուե ՝ի Տէ ՝ի վր քահանայիցն. և հրէաստանեայցն [6] *Եւ ոչ արգելլին զնս ՝ի շինելոյ. մինչև գրեսցեն առ դարեհ թագաւոր. և առցեն հրաման ՝ի նմանէ։ օրինակ թղթոյն՝ զոր գրեցին՝ և առաքեցին առ դարեհ արքայ։ [7] *Սիսին իշխան ասորւոց և փիւնիկեցւոց. և սաթրաբուզան. և որք ը̄ նս՝ ասորւոց և փիւնիկեցւոց գործակալք՝ և գլխաւորք՝ թագաւորի դարեհի ողջոյն։ [8] *Գիտուն լիցի քեզ տէր մեր թագաւոր. քանզի երթեալ հասաք մեք յերկիրն հրէաստանի. և մտաք ՝ի քաղաքն եմ. և գտաք անդ զերեալսն ՝ի գերութէ. և զքահանայսն պետսն ՝ի քաղաքին յեմ. և տեսաք. [9] զի շինէին զտաճարն Տն մծ։ *Եւ նորաքանչ քարամբք կոփածոյիւք՝ և մեծամեծօք. և փայտեայ պահանգս [10] կապէին ՝ի մէջ որմոցն։ *Եւ էր գործն մեծաւ փութով և յաջողուծ ՝ի ձեռս նց. և մեծապէս փառօք կամին վաղ[11]վաղակի կատարել զնա։ *Եւ յայնժամ մեր հարցեալ զծերսն ասեմք. ո՞յր հրամանաւ շինէք զտունդ զայդ՝ և կամ ո՞յր բանիւ արկիք զհիմունս դորա։ [12] *Եւ հարցեալ ցնս, զի տացուք գիտել քեզ. և ցուցցուք քեզ զարսն զառաջնորդս նց. և գրեսցուք զանուանս [13] նց. որք են իշխանք գործոյն նց։ *Եւ նոցա պատասխանի տուեալ ասացին մեզ. մեք եմք ծառայք Տն Ի.Ղ. որ [14] արար զերկինս և զերկիր։ *Եւ էր շինեալ տաճարս այս յառաջքան զբազում ամս ՝ի ձեռն մծ և զօրաւոր [15] թագաւորի Իղի։ *Եւ յորժամ հարքն մեր դառնացուցին՝ և մեղան առ Տր Ի.Ծ Իղի. որ արար զերկինս և զերկիր. մատնեաց զնս ՝ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքայի բաբելացւոց. որ էր [16] թագաւոր քաղդէացւոց։ *Եւ զտունս զայս կործանեալ այրեցին. և զժողովուրդն գերեալ ածին ՝ի բաբելոն։ [17] *Յառաջնում ամի թագաւորութեն կիւրոսի ՝ի բաբելոն գրեաց արքայ կիւրոս. և հրամայեաց շինել զտա[18]ճարս զայս։ *Եւ զսպաս և զսպաս տաճարին զոսկեղէն և զարծաթեղէն՝ զորս էառ նաբուգոդոնոսոր արքայ ՝ի տաճարէն Տն յեմէ. և ետ ՝ի պահեստի ՝ի տան կռոց իւրոց. դարձեալ կիւրոս էառ ՝ի տանէ կռոցն բաբելացւոց. և ետ ցզօրաբաբէլ և ցսամանասար։ [19] *Եւ հրամայեաց նց բերել և դնել զկահս և զսպաս տաճա-

րին Տ՟ն յեհէմ. և զտաճարս զայս Տ՟ն հրամայեաց շինել 'ի տեղւոջ իւրում:
20 * Յայնժամ սաղմանասար եկեալ յեհէմ. եարկ զհիմունս տաճարիս այսորիկ. և յայնմ ժամանակաց հետէ մինչև ցայժմ շինեմք. և դեռևս ոչ է կատարեալ.
21 * Արդ այժմ տէր մեր և թագաւոր դարեհ. խնդրեա՛ և տես 'ի տուն մատենագրաց. ուր կան գիրք յիշատակարանաց 'ի պահեստ թագաւորի կիւրոսի:
22 * Եւ եթէ գտցի հրամանաւ թագաւորի կիւրոսի՛ և բանիւ նորա շինեցին զտուն Տ՟ն յերուսաղէմ. և հաճեալ 'ի վ՟ն հրամանացն կիւրոսի թագաւորի. առ մեզ տեղեկութի տացես վասն իրաց այսր ՟ամի:
23 * Յայնժամանակի թագաւորն դարեհ հրամայեաց խնդիր առնել 'ի տունս մատենագրաց թագաւորացն. որք կային 'ի բաբիլոնի. և գտաւ 'ի բաստանբարիտէնի 'ի մարաց աշխարհին. 'ի տեղւոջ ուր կային գիրք յիշատակարանաց. ուր էր գրեալ այսպէս:
24 * Յամին առաջնում թագաւորութեն կիւրոսի. արքայ կիւրոս հրամայեաց շինել զտունն Տ՟ն յեհէմ. որք մատուցանեն զողջս յայտնութ՟ե 'ի ձեռն հրոյ:
25 * ‖ Եւ հրամայեաց զայս չափ որինակի շինել. բարձրութին լիցի կանգունս վաթսուն. և լայնութին կանգունս վաթսուն. և դնել կարգս երիս քարակոփս. և կարգ մի 'ի փայտէ նորոյ. և զծախս հրամայեալ էր յարքունուստ տալ:
26 * Եւ զկահ սպասուտանն Տ՟ն զոսկեղէնս և զարծաթեղէնս, զորս բերեալ էր նաբուգոդոնոսորայ 'ի բաբելոն 'ի տաճարէն Տ՟ն. որ էր յեհէմ, հրամայեաց տանել կիւրոս թագաւոր 'ի տուն Տ՟ն. որ էր յեհէմ: զի դիցեն անդ՛ որպէս և էր յառաջագոյն:
27 * Եւ յաւել ևս յայս հրաման դարեհ արքայ. և ասէ. սիսին իշխան ՟ամասորւոց և փիւնիկեցւոց. և սաթրաբուզան՛ և այլ ընկերք ձեր. որք կարգեալ էն 'ի գործակալութի ասորւոց և փիւնիկեցւոց. 'ի բաց կացէք 'ի տեղւոյդ յայդմանէ. (և մի մերձենայք 'ի ծառայդ Տ՟ն զորաբաբէլ. որ է իշխան հրէից. և մի 'ի քահանայապետս հրէից. որք միանգամ շինեն զտուն Տ՟ն 'ի տեղւոջ իւրում:)
28 * Եւ ես հրամայեցի. զի ամենևին բոլորանդակ շինեսցի. և եղէց օգնական հրէիցդ. որք եկին յեհէմ. մինչև կատարեսցեն զտաճարդ Տ՟ն Ա՟յ իւրեանց:
29 * Եւ 'ի հարկաց կողմանցդ ասորւոց և փիւնիկեցւոց պատուէր հրամանաւ հրամայեցի. զի տացեն արանցդ այդոցիկ 'ի նպաստաւորութն զոհից Տ՟ն. և տացէ զօրաբաբէլ իշխան զուարակս՛ և խոյս՛ և գառինս:
30 * Նոյն նմին օրինակի և ցորեան. այլև գինի. և ձէթ. և եղիցի այդ ՟ամ կարգեալ ըստ ամէ. որչափ և ժամանակս քահանայքն յեհէմ հրամայեսցեն 'ի ծախս Տ՟ն. օրըստօրէ անխափան տացեն:
31 * Զի մատուսցեն զպատարագս Տ՟ն Ա՟յ բարձրելոյ՛ վ՟ն թագաւորին և զորաց ն՟ր. և աղօթս արասցեն վ՟ն կենաց թագաւորին:
32 * Եւ հրամայեցի՛ եթէ որք հեղգասցին, և կամ անցցէ զհրամանաւ իմով՛ զոր գրեցի. պատժեսցին՛ և տուժեսցին զ՟ամ յիւրմէ. և կախեսցին. և խոշտանգեսցին. և զ՟ամ զստացուածս ն՟ր յարքունիս առցեն:
33 * Այլ ուր անուանեցաւ անունն Տ՟ն. անդ հրամայեալ էր զ՟ամ դարմանս թագաւորութեն և ազգաց. և նա իշխեաց ձեռնարկել՛ և արգելուլ. և խորհեցաւ չար վասն տաճարին Տ՟ն յեհէմ:
34 * Ես թագաւոր դարեհ, մեծաւ զգուշութ՟ե հրամայեցի լինել՛ և կատարել այսմ՛ ամենայնի:

## Գ՟Լ: Է:

1 Յայնժամ ‖ սիսին մեծ իշխան. որ էր 'ի կողմանցն ասորւոց և փիւնիկեցւոց. և սաթրաբուզան. և այլ ընկերք նոցա. որք արգելուին զգործ տաճարին. յորժամ առին զհրամանն 'ի դարեհէ թագաւորէ:
2 * Սկսան վերակացու լինել՛ և հոգ տանել գործոյն. և եղեն գործակիցք ծերոցն հրէից. և քահանայապետից:
3 * Եւ յաջողէր գործ տաճարին. քանզի մարգարէանային անգէ, և զաքարիա:
4 * Եւ կատարեցաւ տաճարն ըստ հրամանի Տ՟ն Ա՟յ ի՟ղի. և ըստ հրամանի կամաց կիւրոսի և դարեհի: և արտաշեսի արքային պարսից. (և յամին վեցերորդի դարեհի թագաւորի:)
5 * Կատարեցաւ տաճարն սուրբ 'ի քսաներորդ ամսոյն՛ ադարի: 'ի վեցերորդ ամի թագաւորութեն դարեհի:
6 * Եւ արարին որդիքն ի՟ղի՛ և քահանայք՛ և ղևտացիք. և ՟ամ եկեալքն 'ի գերութ՟է ո՟ր կարգեալ և հրամայեալ էր 'ի գիրս օրինաց մովսէսի:
7 * Եւ մատուցին 'ի նաւակատիս տանն Տ՟ն. զուարակս հարիւր. խոյս երկերիւր. գառինս չորեքհարիւր:
8 * Եւ այծս վ՟ն մեղաց ՟ամ ի՟ղի երկոտասան. ըստ թուոյ ցեղից իշխանացն ի՟ղի.
9 * Եւ կարգեցան քահանայքն՛ և ղևտացիքն ըստ ազգացն. զգեցեալք զպճնաւորսն առաջի Տ՟ն Ա՟յ ի՟ղի. ըստ հրամանացն 'ի գիրսն մովսէսի. և դռնապանքն ըստ իւրաքանչիւր դրանցն:
* Եւ

այսոցիկ ամենեցուն

‖2. Եզր. 6. 3.

‖2. Եզր. 6. 13.

10 *Եւ արարին որդիքն Իղի. որք եկեալ էին 'ի գերութենէ զզատիկն Տն 'ի չորեքտասաներորդի ամսեանն առաջնոյ . քանզի սրբեցան քահանայքն՝ և ղեւտացիք միանգամայն : 11 *Եւ ամ, որք եկեալ էին 'ի գերութենէ ; և եղեալք եկեալք էին 'ի գերութենէ ; և եղեալք սուրբք ղեւտացիքն : 12 *Զենին զզատիկն Տն ամ որդւոցն Իղի . որք եկեալ էին 'ի գերութենէն՝ և եղբարց իւրեանց՝ և իւրեանց՝ և քահանայիցն : 13 *Եւ կերին որդիքն Իղի . որք եկեալ էին 'ի գերութենէն. ամենեքեան որք որոշեցան 'ի պղծութեանց հեթանոսաց . և որք խնդրեցին զՏր Այ : 14 *Եւ արարին զզատիկն բաղարջակերաց զեօթն օր. և լինէին ուրախ առաջի Տն : 15 *Զի դարձոյց Տր զխորհուրդ թագաւորին ասորւոց 'ի նոսա . և զօրացոյց ըզձեռս նոցա 'ի գործ Տն Այ Իղի :

## Գլ: Է:

1 Եւ յորժամ եղեւ. կատարեցաւ այս ամ. թագաւորեաց արտաշէս արքայ 'ի մն պարսից . առ որ երթեալ եզրի, որդւոյ ազարիայ . որդւոյ յեղերիայ . որ 'ի քեղկեայ . որ 'ի սաղեմայ : 2 *Որդիք սադովկայ . որ 'ի յաքիտոբայ . որ 'ի յամարեթայ . որ 'ի յազեկիայ . որ 'ի մարերոթայ . որ 'ի զարեայ . որ 'ի խեւխիայ . որ 'ի բոկկայ . որ 'ի յաբասեայ որ 'ի փենեէսէ . որ յեղիազարայ . որ յահարոնէ առաջնոյ քահանայէ : 3 *Այս եզր . որ ել 'ի բաբիլոնէ . որ էր գրիչ յաջողակ օրինացն մովսէսի տուեցելոց յԱյ Իղի : 4 *Եւ ետ նմա թագաւորն մեծ փառս . և գտեալ շնորհս առաջի նր փառաւորեաց զնա մեծաւ պատուով : 5 *Եւ ելին ընդ նմա յորդւոցն Իղի . և 'ի քահանայիցն, և 'ի ղեւտացւոց . և 'ի պաշտօնէիցն փառլտաց . և 'ի դռնապանաց . և 'ի ծառայից քահանայիցն յԵրմ : 6 *Յամի եօթներորդի թագաւորութե արտաշէսի արքայի . յամսեանն հինգերորդի . որ էր ամ եօթներորդ թագաւորին . ելեալ 'ի բաբիլոնէ յամսամտի առաջնոյ ամսեանն՝ և յամսամտի հինգերորդի ամսեանն. 7 *Եմուտ յԵրմ. ըստ և յաջողեայ նմա զձանապարհն : 8 *Քանզի լցեալ էր եզր ամ իմաստութբ . և ոչինչ պակասէր 'ի նմանէ յամ պատուիրանացն Տն . և ըստ օրինացն ուսուցանէր Իղի զամ զդատաստանս և զիրաւունս : 9 *Եհաս գիր հրամանի արտաշէսի թագաւորի առ եզր քահանայ՝ և պատմիչ օրինացն Տն . և էր գրեալ զայս օրինակ : 10 *Թագաւոր արտաշէս՝ եզրի քահանայի՝ և պատմչի օրինացն Տն

11 ողջոյն : *Ամ մարդասէր կամօք կշռեալ իմ . հրամայեցի ամ ազգաց հրէաստանի . որք կամիցին ելանել յԵրմ. և քահանայապետիցն . և ղեւտացւոցն . համարձակութի լիցի ը քեզ երթալ յԵրմ: 12 *Եւ որք փափագին ցանկութբ համանիլ 'ի հրէաստան՝ և յԵրմ. հրամայեցաք՝ ես և եօթն խորհրդակիցք իմ: 13 *Զի երթեալ ը օրինացն կատարեսցեն զամ, պահելով ըստ ունիս յօրէնս Տն: 14 *Եւ մատուսցեն զպատարագս Տն Այ Իղի . զոր ուխտեցաք՝ ես և սիրելիք իմ յԵրմ. և զամ ոսկի և արծաթ՝ որչափ և գտցի յերկրիս բաբիլացւոց . Տն Այ մատուսցեն պատարագս յԵրմ : 15 *Եւ առեալ նպաստաւորութի յերկրէս բաբիլացւոց քահանայիցն Տն Այ տարցին յԵրմ, ոսկի և արծաթ . և զոհարակս . խոյս և գառինս . և զայլ 16 ամ զոհս նուիրաց : *Մատուսցեն 'ի 17 սեղան Տն Այ յԵրմ: *Եւ զամ ինչ՝ որպէս կամիցիս համդերձ եղբարբքդ քով.ք՝ արասցես . ըստ ոսկւոյ և արծաթոյ հարկացն ը կամաց Տն Այ քոյ 18 կատարեսջիր : *Եւ զքահանայական զկահ . և զսպաս Տն տարեալ յԵրմ: 19 *Արասջիր ը պիտոյից տաճարին Տն Այ . և եդեալ զամ առաջի Տն Այ քոյ 20 յԵրմ: *Եւ զայլս մնացուածս և զանհելորդս . որինչ և իցեն 'ի պէտս տաճարին . դիցեն զայն 'ի տունս գանձից և թագաւորաց : 21 *Եւ ես արտաշէս թագաւոր հրամայեցի գանձաւորաց . որք են յասորեստանի . և 'ի կողմանս քանանացւոց . որչափ և կամեսցի առնուլ եզր քահանայ և պատմիչ օրինացն Տն Այ բարձրելոյ . անխափան տայցէք նմա արծաթ՝ տաղանդս հարիւր : ըստ նմին օրինակի և ոսկի : 22 *Եւ ցորեան քոռս հարիւր . և գինի 23 և ձէթ նոյնչափ : *Եւ զամ՝ ըստ օրինացն առեալ կատարեսցեն Տն Այ բարձրելոյ : զի մի լիցի ցասումն յԱյ 'ի մն թագաւորութե իմոյ՝ և որդւոյ 24 իմոյ : *Եւ հրամայեալ մն ձեր քահանայիցդ՝ և ղեւտացւոց . և սաղմոսասաց պաշտօնէիցդ . և դռնապանաց . և ծառայից քահանայից . և սպասաւորաց տան Տն : 25 *Մի զհարկս ինչ՝ և մի զայլ ինչ՝ ոք իշխեսցէ ամենևին 26 'ի դոցանէ պահանջել : *Եւ դու եզր՝ ը իմաստութե քում . որ տուեալ է քեզ յԱյ . կացո վերակացուս և դատաւորս . որք դատեսցեն զկողմանս ասորւոց և փիւնիկեցւոց . ամենեքեան որոց ուսեալ է զօրէնս Տն Այ քոյ : 27 *Եւ որք ոչն գիտիցեն, ուսուսջիր. և ամե-

ամենեքեան՝ որք անցանիցեն զօրի_
նօքն Տն Այ. և զօրինօք մեր թագա
ւորաց. տուեալ է քեզ իշխանութի պա
տուհասել՝ և խոշտանգել. և եթէ մա
հապարտք իցեն, սպանանել. և կամ թէ
պատուհասի արժանի՝ պատուհասել՝
և տուգանս պահանջել: 28 *Եւ ասէ
Եզր գրիչ օրինացն Տն: օրհնեալ է Տր
Այ հարցն մերոց. որ ետ զայս ամ 'ի
սիրտս թագաւորին փառաւորել զտա
ճարն Տն. որ է յեէմ: 29 *Եւ զիս մեծա
պէս պատուեաց առաջի թագաւորին.
և առաջի ամ խորհրդականաց նր. և
սիրելեաց՝ և ամ մեծամեծաց նորա:
30 *Եւ եղէ ես զուարճացեալ յոյժ օգ_
նութեք Տն Այ իմոյ: և ժողովեաց
զամարս Իղի. որք երթայցեն ընդ նմա
յեէմ: 31 *‖Եւ այսոքիկ են իշխանք ըստ
նահապետութե հարցն իւրեանց. և
ըստ բաժնից ցեղիցն իւրեանց. որք ելին
ընդ Եզրի 'ի Բաբելոնէ. 'ի թագաւո_
րութեն Արտաշէսի արքայի: 32 *Յորդ_
ւոցն Փենեէսի՝ Գերսոն. յորդւոցն Ի_
թամարայ Գամայէլ: յորդւոցն Դաւ
թայ՝ Փարես: 33 *Յորդւոց Փորոսայ
Զաքարիաս. և որք ընդ նմա էին գե_
րեալք արք հարիւր և յիսուն: 34 *Յորդ
ւոցն Փաաթ. Մովաբ. Եղիա. Ոնիաս.
զարեայ. և ընդ նմա արք երկերիւր:
35 *Յորդւոցն Զաթուեայ. Յեքոնիաս.
Յեթեղեայ. և ընդ նմա արք երեքհա
րիւր: 36 *Յորդւոցն Ադինոբեայ Յոնա_
թանու. և ընդ նմա արք երեքհարիւր
և յիսուն. յորդւոցն Եղամեսեայ. Գո_
թողիա. և ընդ նմա արք եօթանա_
սուն: 37 *Յորդւոցն Սափատիայ. Զաքա
րիաս Միքայելեանց. և ընդ նմա արք
եօթանասուն: 38 *Յորդւոցն Յովաբայ.
Աբադիսեր Եզելեանց. և ընդ նմա արք
երկերիւր և երկոտասան: 39 *Յորդւոցն
Բանեայ. Սաղիմոթ Յոսափեանց. և
ընդ նմա արք հարիւր և վաթսուն:
40 *Յորդւոցն Բեերայ. Զաքարիայ Բե_
րեայ. և ընդ նմա արք քսան և ութն:
41 *Յորդւոցն Աստաթայ. Յովհանէս Կա
տանայ. և ընդ նմա արք հարիւր և տասն:
42 *Յորդւոցն Ադոնիկամայ. Եսփատայ:
և այս անուանք նց. Եղիփաղատ.
Գեուէլ. և Սամէաս. և ընդ նոսա արք
եօթանասուն: (յորդւոցն Բանեայ յու
թիաս Տակուրեանց. և ընդ նմա արք
եօթանասուն:) 43 *Եւ ժողովեալ զնս
յեզր գետոյն. որ անուանի Թերեայ՝
և արարեալ օթեվանս անդ աւուրս
երիս. և արարեալ համար ամենեցուն:
44 *‖Յորդւոց քահանայից. և յորդւոցն
Ղևտացւոց. ոչ ոք գտաւ առ նս: 45 *Եւ
առաքեցի առ Եղիազար. և եկին առ

‖2. Եզր. 8. 1.

‖2. Եզր. 8. 15.

իս. Սամեայ. և Որիբոն. և Նաթան. Ենն
նատոն. Զաքարիա. և Մոսողամոն: այ_
սոքիկ իշխանք և վարդապետք օրի_
նացն: 46 *Եւ ասացի ցնոսա երթալ առ
Ադդեոս իշխան գանձաւորացն: 47 *Եւ
պատուիրեցի նոցա ասել ցԱդդեոս. և
ցեղբարս նորա. և որք միանգամ էին 'ի
տեղւոջ գանձաւորացն. առաքել առ
մեզ 'ի քահանայից տանն Տն: 48 *Եւ
ածին առ մեզ արս. որք էին զօրաւորք
ըստ բանի Տն. և գիտունք յօրէնս Տն:
որդւոցն Մոողեայ. որք 'ի Ղևեայն և
յԻղէ: Ասեբեան. և զորդիս նորա. և
զեղբարս ութնետասան: 49 *Եւ Ասէ_
բիան: և Անունոն. և Ոսէտան. եղբայր
յորդւոցն Քանունեայ. և որդիք նորա
արք քսան: 50 *Եւ 'ի ծառայից քահա_
նայիցն. զորս ետ Դաւիթ իշխան 'ի
գործ սպասաւորութե Ղևտացւոց. որոց
գրեցան անուանք նշանաւորացն եր_
կերիւր և քսան: 51 *‖Եւ քարոզեցաք
անդ պահս. և մատուցաք աղօթս ա_
ռաջի Տն Այ մերոյ. խնդրելով զդիւ_
րութի և յաջողութի մեզ՝ և որդւոց
մերոց. և ամ ինչ որ ընդ մեզ էր:
52 *Ամօթի ծանրութի համարեցաք խնդ_
րել 'ի թագաւորէն հետևակս և հե_
ծեալս յուղարկաւորս ընդ մեզ վս ըզ
գուշութե այնոցիկ. որք ընդդիմա_
նային մեզ: 53 *Քանզի ասացաք ցթա
գաւորն այսպէս. թէ զօրութի Տն Այ
մերոյ է ընդ մեզ՝ և ընդ ամենեսեան.
որք խնդրեն զնա: 54 *Եւ վն այսր ամի
քարոզեալ պահս և խնդրուածս. զի
Տր պահեսցէ զմեզ. և յաջողեսցէ մեզ
'ի ճանապարհս խաղաղութե: 55 *Եւ
որոշեցաք զգլխաւորս ցեղից քահա_
նայիցն արս երկոտասան. և զսեբիան.
և զԱսամիան. և ընդ նս յեղբարց նց
արս տասն: 56 *Եւ կշռեցաք. և տուաք
ցնս զարծաթ և զոսկի. և զսպաս քա_
հանայութե կահու տանն Տն. զոր պար
գևեաց մեզ թագաւորն. և խորհրդա
կիցք նր՝ և իշխանք՝ և ամ Իղ: 57 *Եւ
կշռեալ ետու ցնս արծաթ. տաղանդս
վեցհարիւր և յիսուն. և սպաս արծա
թոյ հարիւր տաղանդ. և ոսկւոյ տա_
ղանդս հարիւր: 58 *Եւ այլ կահ ոսկ_
ւոյ քսան. և կահ պղնձոյ սուրբ և մա
քուր ոսկեգոյն երկոտասան: 59 *Եւ ա_
սացի ցնոսա. և դուք սրբեալք Տն էք.
և ամ՝ սպասդ սուրբ Տն է. և ոսկե_
ղէնք և արծաթեղէնք. աղօթս արա_
րէք առ Տր. և Տր Այ հարցն մերոց
պահեսցէ. և հաստատեսցէ խաղաղութբ
'ի տեղի սրբութե իւրոյ: 60 *Արթուն
կացէք. և պահեցէք. մինչև հաստա_
ցեալ տարջիք զդոսա. ցգլխաւորս քա
հա_

‖2. Եզր. 8. 23.

հանայիցն և ղևտացւոց. և ցիշխանս
հայրապետացն Իղի. որք էին յԵմ:
61 * Ո՛ր առեալ պահապանաց տաճա
րին Տն, և քահանայապետին և ղև
տացւոցն զարծաթ և զոսկի՝ և զկահ
սպասուց տարցին 'ի տաճարն Տն. որ
62 է յԵրուսաղէմ: * ‖ Եւ յարուցեալ [‖ Բ.Եզր. 8.31.]
չուեցաք 'ի գետոյն Թերայ. որ օր եր
կոտասան էր ամսոյն առաջնոյ. և ե
կեալ հասաք յԵմ. (պահպանեալք
բարձրացեալ և զօրացեալ ձեռամբ
Տն և փրկեաց զմեզ Տր Այ մեր յամ
Թշնամեաց մերոց: և հասաք ողջամբ
63 և խաղաղութբ յԵմ.) * Եւ յորժամ
հանգեաք աւուրս երիս յԵմ, յաւ
ուրն չորրորդի՝ կշռեալ տուաք զար
ծաթն և զոսկի 'ի տուն Տն Այ մերոյ.
ցքահանայն Մարմովթի Ուրեանց. և
64 որք ընդ նմա էին: * Եղիազար փենեէ
սեանց. և յոսաբդոս յեսուեան. և մե
Թոր սաբանեան: և այլք ղևտացիք.
65 ցոյս տուաք կշռով և համարով: * Եւ
գրեցաք զկշիռ համարոյն յաւուր յայն
66 միկ: * Եւ որք ելեալք էին ընդ իս 'ի
գերութենէն բաբելացւոց, մատու
ցին պատարագս Տն Այ Իղի. զուա
րակս երկոտասան վասն ամ Իղի՝ խոյս
67 իննսուն: * Գառինս եօթանասուն
և երկուս. նոխազս վն փրկութե եր
կոտասան: զայս ամ զոհս մատուցին
68 առաջի Տն այ: * Եւ ետուն զգիր հրա
մանի Թագաւորին գործակալս Թա
գաւորին՝ և ցիշխանս՝ և ցգաւառա
պետս ասորւոց և փիւնիկեցւոց: և մե
ծաւ պատուով փառաւորեցաւ ազգն
69 մեր՝ և տաճարն Տն: * Եւ 'ի կատա
րել այսր ամի. ‖ եկին առաջի իմ նահա [‖ Բ.Եզր. 9.1.]
պետք և իշխանք որդւոցն Իղի. և ասեն.
անխտիր եղև ամ ազգ որդւոցն Իղի՝ և
իշխանք նց. և քահանայք՝ և ղևտա
70 ցիք: * Խառնակեցան ընդ հեթանոսս՝
և ընդ այլազգիս. և ընդ պղծութիս ամ
անհաւատից. ընդ քանանացիսն. և ընդ
քետացիս. և ընդ փերեզացիս. և ընդ
յեբուսացիսն: և ընդ մովաբացիսն. և
ընդ ամոնացիսն. և ընդ եգիպտացիսն.
71 և ընդ եդովմայեցիսն: * Վասնզի առին ամուս
նացան ընդ դստերս նց. ինքեանք և որ
դիք իւրեանց. և խառնակեցաւ սերմն սր
բութե իւրեանց ընդ ազգս հեթանո
սաց երկրին. և ընկալան իշխանք և
մեծամեծքն իւրաքանչիւր զանօրէնու
Թիս զայս յանձինս իւրեանց. քանզի
նոքա եղեն առաջնորդք չար խառնա
72 կութեց այսոցիկ: * Եւ եղև յորժամ
լուայ ես զբանս զայսոսիկ. պատառե
ցի զհանդերձս իմ. և ողբս առեալ
փետտէի զվարսս գլխոյ իմոյ. և զմօ
րուաց իմոց. և նստայ 'ի սուգ մեծ
73 տրտմեալ: * Եւ ժողովեցան առ իս
ամենեքեան, իբրև լուան զբանն իմ.
որ էր վն Տն այ Իղի: և տեսեալ զիս՝
զորինչ արարի 'ի վր անօրէնութեց
նց. քանզի նստայ այնպէս տրտմեալ
մինչև յերեկս. 'ի հասանել ժամու
74 զոհիցն երեկորին: * Եւ յարուցեալ
'ի սգոյն այնպէս պատառեալք էին
հանդերձքն իմ. և հանդերձ ողբովք
կորացեալ էի: և համբարձեալ զձեռս
75 առ Տր Այ աղաղակեցի: * ‖ Եւ ա [‖ Բ.Եզր. 9.6.]
սեմ. Տր՝ ամաչեմք: և դողամք ա
76 ռաջի երեսաց քոց: * Քանզի մեղք
մեր բազմացան առաւել քան զգլուխս
մեր. և անօրէնութիք մեր բարձրա
ցան առաւել 'ի վերոյ քան զերկինս:
77 * Յաւուրց և 'ի ժամանակաց հարցն մե
րոց. և եմք մեք 'ի մեղս մեծամեծս
78 մինչև ցայսօր: * Եւ վն ‖ մեղաց մերոց՝ [‖ Բ.Օրէ. 28.20.]
և յանցանաց հարցն մերոց մատնե
ցաք մեք 'ի գերութի հանդերձ եղ
բարբք մերովք. և Թագաւորովք և
քահանայապետովք մերովք. և ամ
Թագաւորք երկրի արկեալ զմեզ 'ի
սուր սուսերի՝ գերեցին զմեզ. և աւե
րեցին զտեղիս մեր. և եղեաք մեք
յամօթ՝ մինչև ցայսօր ժամանակի.
79 * Եւ այժմ որչափ եղև 'ի վր մեր ողոր
մութի քո Տր. 'ի թողուլ արմատ՝ և
զաւակ՝ և անուն 'ի տեղւոջս յայսմիկ՝
80 'ի սրբութե քում: * Եւ յայտնեցեր
զլոյս 'ի տաճարի Տն այ մերոյ. և ե
տուր մեզ կերակուր 'ի ժամանակս ծա
81 ռայութե մերոյ: * Եւ 'ի գերութենն
ոչ թողեր զմեզ 'ի ձեռաց. այլ եղեր
մեզ Տր օգնական. և ետուր մեզ գտա
նել շնորհս առաջի թագաւորին պար
սից. և պատուեաց զմեզ. և զարմա
82 նեաց զամկազմածով: * Եւ փառա
ւորեաց զտաճար Տն Այ մերոյ: և
կանգնեաց՝ և շինեաց զանապատն
սիոն. և հաստատեաց զմեզ 'ի հրէաս
83 տանի և յԵմ: * Եւ այժմ զինչ տա
ցուք պատասխանի առաջի քո Տէր
վասն այսր ամի. քանզի անցաք զօրի
նօք և զհրամանօք քովք Տր. զոր ե
տուր 'ի ձեռն ծառայից քոց մարգա
84 րէից: * Ասելով այսպէս. եթէ ‖ եր [‖ Բ.Օրէ. 7.1.]
կիրն յոր մտցես դու ժառանգել զնա.
է երկիր պղծեալ 'ի պղծութեց ազգաց
երկրին. և աղտեղութբ իւրեանց լցին
85 զնա: * Եւ արդ մի առնուցուս դու 'ի
դստերաց նոցին որդւոց քոց կանայս.
և զդստերսն ձեր մի տայցէք կանայս
86 որդւոց նց: * Եւ մի խնդրեսցես առ
նել խաղաղութի ընդ նս զամ ժամա
նակս. և եղիցիր դու զօրաւոր ուտել

զբա

զբաղութիւն երկրին . և ժառանգես
ցեն որդիք քո զերկիրն զայն յաւի_
տենական ժամանակս։ *Եւ որինչ գամ 87
մի անցք անցին ընդ մեզ վա՛ գործոց
մերոց . և վա՛ չարութե՛ մեղաց մերոց։
*Այլ դու Տր բազումանգամ թողեր 88
զմեղս մեր . և ետուր մեզ այսպիսի
զաւակ և արմատ . և մեք դարձեալ
խոտորեցաք անցանել զօրինօք քովք .
և խառնակեցաք ՚ի պղծութիւնս հե_
թանոսաց երկրիս ։ *Եւ ոչ բարկա_ 89
ցար մեզ ՚ի կորուսանել զմեզ մինչև
ցայն վայր . եթե ոչ մնացե արմատ .
և զաւակ . և անուն մեր ։ * Տր Ած 90
իէի . դու արդար և ճշմարիտ ես . ոչ
ապառեցեր զզաւակ մեր . այլ մնացաք
զաւակ և արմատ մինչև ցայսօր ։ *Եւ 91
արդ՝ ահաւասիկ եմք այսօր առաջի քո
յանօրէնութիւս մեր . և ոչև ս կարեմք
կալ առաջի երեսաց քոց . զի բազմա_
ցան անօրէնութիք և չարիք մեր՝ ա_
‖2. Եզր. 10. 8. ռաւել քան զգլուխս մեր ։ * ‖ Եւ յոր 92
ժամ եկաց յաղօթս եզր հանդերձ
խոստովանութբք այսոքիւք . և ող_
բովք մեծամեծօք . անկեալ էր ՚ի վե՛
երեսաց երկրի առաջի տաճարին Տն .
ժողովեցան առ նա ամենեքեան . որք
էին յեէմ, ժողովուրդք բազումք՝
արք և կանայ.ք՝ երիտասարդք և կու_
սանք . քանզի ողբք մեծամեծ.ք էին ՚ի
բազմութենն ։ * Եւ կարդաց յեքօ_ 93
նիայ իէլու յորդւոցն իէլի . և ասէ
ցեզր . մեք մեղաք առ Տր Ած . և ա_
ռաք կանայս յայլազգեաց երկրիս այ
սորիկ ։ *Եւ այժմ են այսօր անօրէ_ 94
նութիք ՚ի միջի մերում . եկայք ամե
նեքեան՝ դիցուք երդմունս առաջի
Տն՝ և հանցուք ՚ի բաց զկանայս մեր .
զորս առաք յայլազգեաց . հանդերձ
որդւովք իւրեանց ։ *Որպ և հրամայէ 95
յօրէնսն Տն Այ մերոյ . արի վաղվա
ղակի՝ և կատարեա ։ * Զի առ քեզ 96
են ամենայն իրք մեր . և մեք ընդ քեզ .
զինչ և հրամայեսցես՝ արասցուք ։
*Եւ յարուցեալ եզր երդմնեցոյց զիշ 97
խանս ցեղից քահանայից՝ և ղևտայ
ւոցն . և զամենայն իէլ՝ առնել ըստ
այսմ օրինակի . և երդուան ։

Գլ: Թ .

‖2. Եզր. 10. 6. Եւ ‖ յարուցեալ եզր ՚ի սրահէ տա 1
ճարին Տն . չոգաւ ՚ի տունն յով
հաննեայ եղիասբեանց ։ * Եւ անդ 2
ագաւ . զհաց ոչ ճաշակեաց . և զջուր
ոչ էարբ՝ և ողբացեալ ՚ի վե՛ անօրէ_
նուեցն՝ և մեծամեծ մեղաց բազմու_
թեն ։ *Եւ քարոզ կարդաց յամենայն 3
հրէաստան՝ և յեէմ . թե ամենեքեան .
որք ելեալք են ՚ի գերութենէն . եկեա_
4 ցեն՝ և ժողովեսցին յեէմ ։ * Եւ եր
կուց զհետ և երից աւուրց , որք ոչ
ժամանեսցեն անդր , դատեալք յա_
ռաջնորդացն, և ՚ի ծերոցն, յափշտա_
կեսցեն զստացուածս նոցա . և նոքա
օտարացեալք արտաքս ելցեն քան
զբազմութի ժողովրդոց գերութեն ։
5 * Եւ ժողովեցան ամենեքեան . որք
էին յազգէն յուդայ և բենիամինի մին
չև յերիս աւուրս յերուսաղէմ . յամ
սեանն իններորդի՝ քսաներորդի աւ_
6 ուր ամսոյն ։ * Եւ նստան ընդ նմա
ամ բազմութիւնն յընդարձակութե
սրահի տանն Տն . և սարսռացեալք
դողային վասն ցրտութե ձմերայնոյն
7 * Եւ յարուցեալ եզր ասէ ցնս . դուք
էք , որք մեղայք՝ և արարիք կանայս ՚ի
դստերաց այլազգեաց . և յաւելլիք զա
8 նօրէնութի ՚ի վե՛ իէլի ։ * Եւ արդ՝
տուք զխոստովանութի և զփառս Տն
9 Այ հարցն մերոց ։ * Եւ արարէք ըզ
կամս նր . և զատեալք որոշեցարուք
յամենայն հեթանոսաց երկրի՝ և ՚ի
կանանց այլազգեաց . զորս արարիք ։
10 * Եւ միաբանեալ ամենայն բազմու_
թեին աղաղակեցին մեծաձայն՝ և ա_
սեն . այդպէս արասցուք, որպ ասացերդ ։
11 * Այլ վասնզի ժամանակս ձմեռն է .
և մեք բազմութի յոյժ . և ոչ կարեմք
այսպէս ժուժալ վշտաց նեղութես .
և գործս ոչ թէ զմի օր է՝ կամ զերկուս .
վա՛ զի յոյժ սաստիկ մեղաք յիրս յայս ։
12 * Արդ՝ կացցեն իշխանք և առաջ_
նորդք ՚ի վերայ բազմութես . և ամ
ուրուք՝ որոյ իցէ ՚ի տունս իւր կին
13 այլազգի ։ * Երթեալ պահանջեսցեն
՚ի նմանէ ժամանակս . և իւրաքան_
չիւր տեղեացն կացցեն ծերք և դատա
ւորք՝ և լուծեալ քակեսցեն ՚ի մէնջ
զբարկութի Տն՝ զմեծամեծ չարեացս
14 այսոցիկ . զոր գործեցաք ։ * Յօնաթան
ազայելեանց՝ և եզէկիայ թովկեանց՝
ընկալան յանձինս առնել զայս . և մո
սողամոս՝ և ղևի՝ և սաբատէոս . որք
15 միաբանեցան ընդ նոսա ։ * Եւ արա
րին ըստ ամի . որպ հրամայեցին . որք
16 ելեալք էին ՚ի գերութենէն ։ * Եւ
ընտրեաց եզր արս իշխանս՝ քահանայս
և հայրապետս ըստ անուանց իւրց . և
նստան յամսամտին՝ յամսեանն տասն
17 երորդի . զի վճարեսցին իրքն ։ * Եւ
ժողովեալ ածին զարսն և զկանայսն .
որք ունէին զայլազգիսն՝ մինչև յամին
18 առաջներորդ ։ * Եւ գտան ՚ի քահա_
նայիցն՝ որք ժողովեալ էին . որք ունէ_
ին զկանայս այլազգեացն . ( և էին
խառնակեալք ընդ ամպարշտութիս )

*Յորդ_

19 *Յորդւոցն յեսուայ յովսեդեկեանց և եղբօրն նորա մաթեղայ. և եղիազարոս. և յորիբոս. և յովադան: 20 *Եւ սկսան հանել զկանայս իւրեանց զայլազգիս. և մատուցին իւրաքանչիւր խոյս վն թողութե մեղացն անգիտութե: 21 *Եւ յորդւոցն եմօրայ. անանիա. և զաբդէոս. և մանաս. և սամեէաս. և յերիէլ. և ազարիաս: 22 *Եւ յորդւոցն փասուր՝ եղիանաս. և մասիաս. և իսմայէլ: և նաթանայէլ. և ոկեթեկիեդոս. և սաղթոս: 23 *Եւ յորդւոցն ղևտացւոց. յոզապատոս. և սեմիս. և կոնոս. այս ինքն է սաղիտաս. և փաթէոս. որ և յուդաս. և յոնաս: 24 *Ի սաղմոսասաց պաշտօնէիցն. եղիասիբոս. բաքուրոս: 25 *Ի դռնապանացն. սաղոմոս. և տողբանէս: 26 *Եւ յիէլէ յորդւոցն փարոսայ. յերամաս. և յեդդիաս. և մեղքիաս. և միաղես. և եղիազարոս. և ասաբիաս. և բանէաս: 27 *Եւ յորդւոցն եղիակիմ. մաթանիաս. զաքարիաս. յեզորիէլ. յովադիոս. և յերիմոթ. և այեդեաս: 28 *Եւ յորդւոցն զադում. եղիադաս. եղիասիմոս. ոթոնիաս. արիմոթ. և սաբաթոս. և զարդէաս: 29 *Եւ յորդւոցն բեբիա. յովաննէս. և անանիաս. և յօզաբդոս. և եմաթոս: 30 *Եւ յորդւոցն մանի. և ղամոս. սամումոս. յեդէոս. յասուբոս. յասաեղոս. և յերեմօթ: 31 *Եւ յորդւոցն ադդի. նաթոս. և մոոսիաս. ղակունոս. նաիդաս. և և մատաթիաս. և սեսթէլ. և բաղունոս. և մանասէ: 32 *Եւ յորդւոցն աննաս. եղիոնաս. և ասսէաս. և մեղքիաս. և սաբէոս. և սիմօն. և քոսամէոս: 33 *Եւ յորդւոցն ասոմայ. աննէոս. և մատաթիաս. և բաննէուս. և եղիփաղատ. և մանասէ. և սեմէի: 34 *Եւ յորդւոցն բանանի երեմիաս. և մօմդիս. իսմաերոս. և յովէլ. մաբդէ. և պեդիաս. և անոս. րաբասիօն. և անասիբոս. և մամնիտանեմոս. եղիասիս. բաննուս. եղիաղի. սոմեիս. սեղեմիաս. նաթանիաս. և յորդւոցն եզորայ. սեմ. եզրիէլ. ազայէլ. սամատոս. զամբրի. յոսէփ: 35 *Եւ յորդւոցն նաումայ. զազիկիաս. զաբադիաս. եդիոսէլ՝ բենեսէաս: 36 *Այսք ամենեքեան էին. որոց առեալ էր զկանայս այլազգեացն. և արձակեցին 'ի բաց զկանայս իւրեանց. և զորդիս իւրեանց: 37 *Եւ բնակեցան քահանայքն՝ և ղևտացիքն. և յիէլէ յէմ. և 'ի գաւառին. յամսեանն յամսեանն եօթներորդի. և որդիքն Իէլի բնակեցան 'ի բնակութիս իւրեանց:

38 *Եւ ժողովեցան ամ բազմութիւն միաբան յընդարձակ տեղի կողմանն արևելից առաջի դրան տաճարին: 39 *Եւ ասացին ցեզր քահանայապետ՝ և պատմիչ օրինացն. զի բերցէ զօրէնսն մովսէսի զտուեալսն 'ի Տէ ԱԾ Իէլի: 40 *Եւ եբեր 'ի մէջ եզր զօրէնսն առաջի ամ արանց և կանանց. և առաջի ամենայն քահանայիցն՝ և լսել զօրէնսն մովսէսի՝ որ 'ի Տէ յամսեամտի եօթներորդ ամսեանն: 41 *Եւ կարդայր յառաջնում դրան տաճարին յընդարձակին. յառաւօտէ մինչև ցոր հասարակ. առաջի ամ արանց և կանանց. և լսէին, և 'ի միտ առնուին ամ բազմութիւն զօրէնսն Տն ԱԾյ: 42 *Եւ կայր եզր քահանայ՝ և պատմիչ օրինացն Տն 'ի վերայ փայտեղէն բեմի. զոր կազմեալ էր: 43 *Եւ կային մօտ առ նմա յաջմէ կողմանէ. մատաթի. սամուս. անանիաս. ազարիաս՝ ուրիաս՝ եզեկիաս. բաաղսամոս: 44 *Եւ յահեկէ կողմանէ. փաղդէոս. միսայէլ. մեղքիաս ղօթաս. ուբոս. նաբադիաս. զաքարիաս: 45 *Եւ առեալ 'ի ձեռս եզրի զգիրս օրինացն. քանզի նախիւր մեծաւ փառօք առաջի ամենեցուն. (և ամ բազմութիւն նստէին առաջի նորա:) 46 *Եւ յորժամ եբաց զգիրս օրինացն. յոտն կացին ամենայն բազմութիւն. և օրհնեաց եզր զՏէր ԱԾ բարձրեալ՝ զԱԾ զաւրութեան և զամենակալ: 47 *Եւ միաբան ամ բազմութիւն ասէր՝ ամէն: և ամբարձեալ զձեռս իւրեանց 'ի վեր՝ անկանէին յերկիր 'ի վերայ երեսաց իւրեանց. 48 և երկիր պագանէին Տն ԱԾ: *Եւ յեսու. և աննոս. և ասրաբիաս. յադինոս. յակուբոս: սաբատէոս. օդէաս. մաննէաս. և կաղիտաս. ազարիաս. և յոզաբդոս. և անանիաս փիլաթաս: 49 *Այսոքիկ էին ղևտացիքն. որք ուսուցանէին ժողովրդոցն զօրէնսն Տն. և տային նոցա 'ի միտ առնուլ. և լսանէին օրինօքն Տն ԱԾ: 50 *Եւ ասէ ատտարատես ցեզր քահանայ՝ և պատմիչ օրինացն Տն. և ցղևտացիսն. որք ուսուցանէին զբազմութիւն: 51 *Ասէ ցնս առաջի ամենեցուն. օրս այս, է որ սրբութե Տն. և ամենեքեան էին լուծեալք 'ի լսել օրինացն Տն: 52 *Գնացէք. և երթայք կերայք զպարարտութի. և արբէք ըզ քաղցրութի. և առաքեցէք զգիր այ նոցիկ. որք ոչ ունիցին ինչ: 53 *Զանզի սուրբ է օրս այս Տն. և մի տրտմեցուցանէք զօա. քանզի Տր ԱԾ է. որ փառաւորեաց զմեզ: 54 *Եւ ղևտացիքն ամե_

Բ. Եզր. 8. 1.

Բ. Եզր. 8. 10. [illegible]

ամենայն հրամայեցին թագաւորքն՝ և ասեն. որս այս սուրբ է՝ և մի՛ տրտմեսցուցանէք զսա։ *Եւ ասեն բազ 55 մութիւն. որոյ կացցէ՝ կերիցէ՝ արբցէ և ուրախ լիցի. և տացէ այնմիկ. որոյ ոչն կացցէ. և եղիցին ամենեքեան ու րախ այսօր յայժ. վասնզի լցայք. և՛ի միտ առէք զբանս օրինացն Տն՝ յորս դուք ժողովեցայք. և մեք ուսուցաք 56 ձեզ։ *Եւ ժողովեցան բովանդակ յեկեղեցին՝ առնել զուրախութիւն. ըստ պատուիրանաց Տն Այ Իսրայէլի։

# ԳԻՐՔ ԵԶՐԱՍԱՑ ԵՐԿՐՈՐԴ։

## ՈՐ Է ԸՍՏ ԼԱՏԻՆԱՑԻՈՑՆ ԵՈԱԶՆԵՐՈՐԴ։

### Գլուխ Առաջներորդ։

ՅՈՒԱԶ 1 ՆՈՒԹ Ա- մին կիւրոսի արքային պարսից. ՚ի կատարել բանին Տն ‖ ՚ի բերանոյ երեմիայի մարգարէի. զարթոյց Տր զոգին կիւրոսի թագաւորին պարսից. և ետ հրաման պատուիրանի յամ թագաւորութեն իւրում. և գրեաց առ ամենեսեան օրինակ զայս։ *Այսպէս ասէ կիւրոս թագաւոր 2 պարսից. զամ թագաւորութիս երկրի ետ ինձ Տր Ած երկնից. և նա հրամայեաց ինձ առնել՝ և շինել նմա տաճար յեկեղ հրէաստանի։ *Ով որք և 3 իցէ ՚ի ձեզ յամի ժողովրդեան Տն. եղ իցի ընդ նմա. ելցէ յեկեղ հրէաստանի. և շինեսցէ զտուն Տն Այ Իլի. և ինքն Ած, որ բնակեալ է յերուսաղէմ, եղիցի ընդ նմա։ *Եւ 4 զամ պատրաստութի իւր առցէ ընդ իւր. և տարցի ՚ի տեղին յայն. ուր ինքն բնակեսցի. և առցէ այր ընդ իւր զամենայն կազմած իւր. որինչ և իցէ. արծաթեղէն և ոսկեղէն. և զայլ կահ՝ և զանասուն՝ հանդերձ ընկերօք իւրեանց, առցեն ը իւրեանս ՚ի պատրաստութի տաճարին Տն Այ յեկեղ։ *Եւ յարեան իշխանք հայրապետաց 5 որդւոցն յուդայ՝ և բենիամինի. և քահանայքն՝ և ղևտացիք ամենեքեան՝ զորոց զարթոյց Տր Ած զոգիս նց ելանել՝ և շինել զտաճարն Տն Այ յերուսաղէմ։ 6 *Եւ ամենեքեան. որք շուրջ էին զնոքօք՝ օգնէին. և զօրացուցանէին զձեռս նց՝ տալով զարծաթ և զոսկի՝ և զկահ՝ և զանասուն. և ընծայիւք և պատարագօք լցուցանէին 7 զնս։ *Եւ թագաւորն կիւրոս ետ բերել զամ սպասս և զկահ տաճարին Տն, զոր էառ նաբուգոդոնոսոր յեկեղ. և եդ ՚ի պահ ՚ի տուն աստուծոց իւր 8 ոյ։ *Ետ բերել զայն ամ կիւրոս թագաւոր պարսից ՚ի ձեռն միթրիդատայ գանձաւորի. և համարեալ ետ 9 սասմանասար իշխանն յուդայ։ *Եւ այս է թիւ համարոյն. գոհարանք ոսկեղէնք երեսուն. և գոհարանք սպասուն արծաթեղէնք հազար քան և 10 ինն։ *Սկաւառակք ոսկիք երեսուն. և արծաթեղէնք կրկին հազար։ 11 *Ամ կահք ոսկեղէնք և արծաթեղէնք հինգհազար և չորեքհարիւր. և ընդ ամենայն՝ որք էին ընդ սամանասարայ և ընդ ելելոց գերութեն ՚ի բաբելոնէ յերուսաղէմ։

### Գլ։ Բ։

1 Այսքիկ ‖ են որդիքն Իլի ըստ իւր աքանչիւր տեղեացն. որք ելանէին ՚ի գերութենէն՝ զոր գերեաց նաբուգոդոնոսոր թագաւոր բաբելացւոց ՚ի բաբելոն. զորս և դարձոյց կիւրոս

‖ Երեմ. 25. 12. և 29.10 2. Մնաց. 36.2. 1. Եզր 2.3.

‖ 1. Եզր 7. 9.

ոս 'ի բաբիլօնէ յեմ . և 'ի հրէաստանն՝ այր յիւրաքանչիւր քաղաք : 2 *Եւ որք էին ելեալք ընդ զօրաբաբելի . յեսու, նէեմի . սարէաս . հռէլիդէաս . մարդոքէոս . բաղասան . մասփար , բագուէար . հռէում . բաանայ . այս է թիւ ժողովրդեան որդւոցն իէլի : 3 *Որդիք փորոսայ երկու հազար հարիւր եօթանասուն և երկու : 4 *Որդիք սափատայ չորեքհարիւր եօթանասուն և երկու : 5 *Որդիք արեսայ եօթն հարիւր եօթանասուն և վեց : 6 *Որդիք նեփթաղիմի մօաբացւոյ . և որդւոց յեսուայ և հռովաբայ . երկու հազար ութնհարիւր և երկոտասան : 7 *Որդիք յեղամայ երկու հազար երկերիւր յիսուն և չորք : 8 *Որդիք զատանայ իննհարիւր քառասուն և հինգ : 9 *Որդիք զորբայ եօթնհարիւր և յիսուն : 10 *Որդիք բանեայ հազար քառասուն և ութն : 11 *Որդիք բիբեայ ութնհարիւր քսան և երեք : 12 *Որդիք արգեայ հազար երեքհարիւր քսան և երկու : 13 *Որդիք ադոնիկամայ ութն հարիւր եօթանասուն և եօթն : 14 *Որդիք բոսերայ երկու հազար ութհարիւր և վեց : 15 *Որդիք ադդինեայ չորեքհարիւր յիսուն և չորս : 16 *Որդիք ազեր եզեկիայ . իննսուն և վեց : 17 *Որդիք բեսեայ երեք հարիւր քսան և հինգ : 18 *Որդիք գաբերի իննսուն և հինգ : 19 *Որդիք բեթղեհեմ հարիւր քսան երեք : 20 *Որդիք նետոփայ յիսուն և վեց : 21 *Որդիք անաթովթ հարիւր քսան և ութն : 22 *Որդիք ասմովթ քառասուն և երկու :

23 *Որդիք կարիաթարիմ քափիրա և բերովթ . եօթնհարիւր քառասուն և երեք : 24 *Որդիք հռամայ և գայեբայ հազար և քսան և մի : 25 *Որդիք մաքմաս հարիւր քսան երկու : 28 *Որդիք բեթելայ և յեդեայ . չորսհարիւր և քսան և երեք : 29 *Որդիք նաբօթ . յիսուն երկու : 30 *Որդիք մակեբիս . հարիւր յիսուն և վեց : 31 *Որդիք եղեմարայ հազար երկու հարիւր յիսուն և չորս : 32 *Որդիք երամ երեքհարիւր և քսան : 33 *Որդիք լոդլօն ղոլգադիդ . և ոնայ . եօթն հարիւր քսան և հինգ : 34 *Որդիք յերիքոյ երեքհարիւր քառասուն և հինգ : 35 *Որդիք սենաայ երեք հազար վեցհարիւր երեսուն : 36 *Եւ որդիք քահանայիցն . որդիք յեդուայ տանն յեսուայ յօսեդեկեանց իննհարիւր եօթանասուն և երեք : 37 *Որդիք եմեր հազար և յիսուն և երկու : 38 *Որդիք փասուր հազար երկու հարիւր քառասուն և հինգ : 39 *Որդիք երեմ հազար և եօթնհարիւր : 40 *Եւ ղևտացիքն՝ որդիք յեսու .

ծե

և կադմիէլ որդւոցն սեդուիա եօթանասուն և չորս : 41 *Եւ որք էին սաղմոսասացք և երգեցիկք . որդիք ասափայ հարիւր քսան և ութն : 42 *Որդիք դռնապանացն . որդիք սեղում . որդիք ատեր . որդիք տեղմօն . որդիք ակուբ . որդիք ատիտայ . որդիք սուբայի . ամենեքեան հարիւր երեսուն և ինն : 43 *Եւ նաթանայ . որդիք առաղայ . որդիք ասուփայ . որդիք տաբբովթ : 44 *Որդիք կերաւոս : որդիք սիայ . որդիք փադօն : 45 *Որդիք ղաբանայ . որդիք ագաբայ . 46 որդիք ակուբ : *Որդիք ագաբ . որդիք 47 սաղամէի . որդիք անան : *Որդիք գեդդէլ . որդիք գաար . որդիք հռադիայ . 48 *Որդիք հռասոնի . որդիք նեկովդան . 49 որդիք գազամ : *Որդիք գազայ . որ50դիք փասէ . որդիք բասի : *Որդիք ասենայ . որդիք մովանիմ . որդիք նե51փուսիմ : *Որդիք բակուկ . որդիք 52 ակուփայ որդիք արուր : *Որդիք բաղօթ . որդիք միդայ . որդիք արսայ : 53 *Որդիք բարկոս . որդիք սիսարայ . որ54դիք թամայ : *Որդիք նեսուեայ . որդիք 55 ատուփայ : *Որդիք ծառայից սաղօմօնի . որդիք սոտէ . որդիք ասոփերաթ . 56 որդիք փակդուրայ : *Որդիք յեղայ . որդիք դերկօն . որդիք կեդդիէլ : 57 *Որդիք սափատիայ . որդիք ատտիլ . որդիք փաքերօթայ ասաբում . որդիք 58 եմէի : *Ամենայն որդիք նաթանայ . և որդիք ծառայից սաղօմոնի . երեքհարիւր իննսուն և երկու : 59 *Եւ այսոքիկ են ելեալքն 'ի թեմեղէք . թեղարեսայ . քերուբ՝ եդար՝ եմեր . և ոչ կարացին պատմել զտունն հարցն իւրեանց . եթէ 60 իցէ զաւակ նր յիէլի : *Որդիք դաղաւայ . որդիք տուբիայ : որդիք նեկոդայ . վեցհարիւր և յիսուն և երկու : 61 *Եւ յորդւոյ քահանայիցն . որդի աբաիայ . որդի ակուս . որդիք բերզեղայի . իբրև առին 'ի դստերացն բերզեղայի գաղաադացի իւրեանց կանայս . և եղև մոռացումն անուանց 62 նր : *Եւ խնդրեցաւ ազգահամար գրոց նոցա՝ և ոչ գտաւ . և որոշեցին 63 զնոսա 'ի քահանայիցն : *Եւ ասէ անաթերսիթայ ցնոսա . չէ արժան ձեզ ուտել 'ի սրբութեցն սրբութեան՝ մինչև յարիցէ քահանայապետ՝ և յայտնեալ ցուցցէ . և նովաւ լուսաւորեսցի 64 ամ մինչև իսպառ : *Եւ էր ամ եկեղեցին միանգամայն . չորք բիւրք և երկու հազարք երեքհարիւր և վաթ65սուն : *Առանց ծառայից և աղախնեայց իւրեանց : և կրտսերք նոցա հազարք երեք հարիւր երեսուն և եօթն : և երգիչք սաղմոսաց նր արք

և կանայք երկերիւր : 66 *Ձիք նոցա եօթն հարիւր երեսուն և վեց : Ջորիք նոցա երկերիւր քառասուն և եօթն : 67 *Ուղտք նոցա չորեքհարիւր երեսուն և հինգ. էշք նոցա վեցհազար եօթն հարիւր և քսան : 68 *Եւ իշխանք հայրապետացն՝ որք եկին 'ի տուն Տն յԵրուսաղէմ, նպաստաւորեցան 'ի տունն Այ. 'ի պատրաստութիւն շինութեան նր : 69 *Որչափ էր 'ի զօրութեան նց, ետուն 'ի կազմած գանձու գործաւորութեանն. ոսկի դիդրաքմայս վեցբիւր և հազար. և հարիւր պատմուճանս քահանայիցն: 70 *Եւ նստան քահանայքն և ղևտացիքն. և 'ի ժողովրդոյն. և երգեցիկքն՝ և դռնապանքն՝ և նաթանացիքն 'ի քաղաքս իւրեանց. և ամ Իէլ յիւրաքանչիւր քաղաքս :

## Գլ: Գ.

Ա.Եզր. 5.47.

1 Եւ ժամանեալ էհաս ամիսն եօթներորդ. և էին որդիքն Իէլի յիւրաքանչիւր քաղաքս. և ժողովեցան ամ ժողովուրդքն իբրև զմի այր յԵրուսաղէմ : 2 *Եւ յարեաւ յեսու յովսեդեկեանց՝ և եղբարքն նորա քահանայք. և զօրաբաբէլ որդի սաղաթիելի, և եղբարքն նր վեց. և շինեցին սեղան զոհից Տն Այ Իէլի մատուցանել 'ի վր նր ողջակէզս. ըստ գրեցելոյն յօրէնսն Մովսէսի առն Այ : 3 *Եւ պատրաստեցին զզոհարանն ըստ կազմութեան իւրում. վասն զի կասկածէին յազգաց երկրին. և մատուցին 'ի վր նորա ողջակէզս վաղվաղակի Տն Այ իւրեանց. մի ընդ առաւօտս՝ և մի ընդ երեկոյս : 4 *Եւ արարին զտօն տաղաւարահարացն ըստ գրեցելոյն՝ և ողջակէզս օրըստօրէ 'ի մի թուեալ որպէս և պատուիրեալ էր նոցա : 5 *Եւ մատուցանէին այլևս ողջակէզս յամսագլուխս և 'ի շաբաթս. և յամ տօնս տարեկանաց Տն սրբութեց. և զամ կամաւորացն. զոր մեղան չէին Տն : 6 *Եւ յառաջնումն աւուր ամսեանն եօթներորդի սկսան մատուցանել ողջակէզս Տն Այ. և տաճարն ոչ ևս էր հիմնարկեալ : 7 *Եւ ետուն արծաթ քարահատացն՝ և հիւսանցն. և կերակուրս՝ և ըմպելիս՝ և ձէթ՝ սիդոնացւոց՝ և տիւրացւոց. և բերէին փայտս մայրս 'ի լիբանանէ ընդ ծով 'ի յոպպէ՝ ըստ և հրամայեաց նց կիւրոս թագաւոր պարսից : 8 *Եւ յերկրորդի ամի ելանելոյն նոցա յորժամ եկին 'ի տաճարն Տն յԵրուսաղէմ յամսեանն երկրորդի՝ սկսաւ զօրաբաբէլ սաղաթիելեանց՝ և յեսու յովսեդեկեանց՝ և եղբարքն նց և քահանայքն և ղևտացիք՝ և ամ եկեալքն 'ի գերութենէն յԵրուսաղէմ. և կացուցին զղևտացիսն 'ի քսանամենից և 'ի վեր՝ վերակացուս 'ի վր գործոց տանն Տն : 9 *Եւ յեսու՝ և որդիք նր և եղբարքն նորա. կադմիէլ և որդիք նր. և որդիք յուդայ վերակացուք 'ի վր գործոց տանն Տն. որդիքն Ենադադ 10 և եղբարք նորա ղևտացիք : *Եւ արկին զհիմն՝ և սկսան շինել զտունն Տն. և կային քահանայքն զգեցեալ զպատմուճանսն. և հարկանէին զփողս իւրեանց. և ղևտացիքն որդիք ասափայ ծնծղայիւք օրհնէին զՏր Այ որպէս և կարգեաց դաւիթ թագաւոր Իէլի : 11 *Եւ ասէին այր ցընկեր իւր. խոստովան եղերուք. և գոհացարուք զՏէ. զի քաղցր է. զի յաւիտեան է ողորմութի նր 'ի վր Իէլի : և ամ ժողովուրդն մեծաձայն օրհնէին զՏր Այ Իէլի. վս 12 զի արկան հիմունք տանն Տն : *Եւ բազումք 'ի քահանայիցն՝ և 'ի ղևտացւոյն՝ և յիշխանաց՝ և 'ի հայրապետացն՝ և 'ի ծերոցն՝ որոց տեսեալ էր զտաճարն Տն. և յայնժամ տեսին աչօք իւրեանց զհիմն նորա. լային մեծաձայն. և ժողովուրդքն ամ նշանակէին զուրախութի. և բարձրացուցանէին 13 զձայնս իւրեանց : *Եւ ոչ ոք էր 'ի ժողովրդեանն. որ կարէր զատել՝ և լսել զձայն ուրախութեանն. վասն զի ժողովուրդն աղաղակէր մեծաձայն՝ և լսելի լինէր ձայնն մինչև 'ի հեռաւոր տեղիս :

## Գլ: Դ.

Ա.Եզր. 5.60.

1 Եւ լուան՝ որք նեղէին զյուդայ և զբենիամին. եթէ որդիքն Իէլի եկեալքն 'ի գերութենէն շինէին զտուն 2 Տն Այ Իէլի : *Եւ մերձեցան առ զօրաբաբէլ և առ իշխանս հայրապետացն. և ասեն ցնոսա՝ շինեսցուք և մեք ընդ ձեզ, որպէս և դուք. խնդրեսցուք 'ի 'ի Տէ Այ ձերմէ. քանզի և մեք նոյնպէս զոհեմք զոհս, յօրէ յորմէ ասորդան թագաւոր ասորւոց էած զմեզ 3 այսր : *Եւ ասէն ցնոսա զօրաբաբէլ և յեսու յովսեդեկեանց՝ և մնացորդք իշխանաց հայրապետացն Իէլի. ոչ է արժան մեզ և ձեզ հասարակ շինել զտուն Տն Այ մերոյ. մեք միայն իսկ շինեսցուք զտուն Տն Այ Իէլի. որպէս և հրամայեաց մեզ կիւրոս թագաւոր պարսից : 4 *Եւ ժողովուրդք երկրին այնորիկ լքուցանէին զձեռս ժողովրդեանն հրէաստանի. և խափանէին զնս 5 'ի շինելոյ : *Եւ կալեալ վարձաւորս խորհէին զնոսա խափանել զամ աւուրս կիւրոսի թագաւորութեանն պարսից.

սից· մինչև յաւուրս դարեհի պարսից արքայի: 6 *Ի թագաւորութեանն ասարսոյերու պարսից՝ 'ի սկզբան թագաւորութեան նորա գրեցին թուղթ· որք բնակեալ էին 'ի հրէաստանի և յեէմ: 7 *Եւ գրեցին յաւուրս արտաշէսի· միթրիդատէս· տաբէել հանդերձ այլովք ծառայիւք նորա հարկահանօքն: և գրեցին գիր ասորերէն· և էր զնա թարգմանեալ հռէումբաաղտիմ: 8 *Եւ այս են բանք թղթոյն· զոր առաքեցին նոքա առ արտաշէս թագաւոր: ծառայք քո· որք եմք բնակեալք յայս կողմն գետոյն: 9 *Ռէում բաաղտեմ, և սամսայի դպիր· և այլևս ծառայակիցք մեր· դէէնէս· ափարսաթաքայիէ· տարփաղէէ· ափերսէէ· արքուէէ· բաբիլոնէէ· սուսանայ· քէէ դաւէէ: 10 *Եւ այլ մնացեալ ազգք· զորս բնակեցոյց ասենափար մեծ և պատուական· 'ի քաղաքս սամարոմ· այսինքն սամարիայ յայս կողմն գետոյն: 13 *Արդ արասա թագաւոր խաղաղութիւն· այժմ գիտութիւն լիցի քեզ թագաւոր· եթէ քաղաքն այն շինեսցի· և պարիսպք նորին կանգնեսցին· հարկս քեզ ոչ ոք տայ: 14 *Այլև ընդդիմադարձ ևս լինի թագաւորաց· և զայնպիսի յանդգնութիւն մեք ընդդէմ թագաւորաց ոչ կամիմք տեսանել: և վասն այսորիկ գրեցաք առ քեզ թագաւոր: 15 *Զի խնդրեսցես· և արասցես· և գտցես 'ի գիրս յիշատակարանաց հարցն քոց· և գիտասցես եթէ քաղաքս այս ապստամբող է· և յամենայն ժամ ընդդէմ կացին թագաւորաց· և ապստամբ են նմ փախստեից յամենայն ժամանակս յաւիտենից· և վասն այսորիկ քաղաքս այս իսկ աւերեցաւ: 16 *Արդ տուաք մեք քեզ գիտել թագաւոր· եթէ քաղաքս այս շինեսցի՝ և պարիսպք սորա կանգնեսցին· չէ քեզ խաղաղութիւն: 17 *Եւ առաքեաց թագաւորն առ հռէում բաաղտեմայ՝ և սամսայի դպրի՝ և այլ ծառայակցաց՝ որք բնակեալք էին 'ի սամարիայ՝ և մնացորդացն յայն կողմն գետոյն· և ասէ: խաղաղութիւն ընդ ձեզ: 18 *Զհարկահանս· զորս առաքեցիք առ իս, մտեալ առաջի իմ և տեղեկացուցեալ ինձ զնմ: 19 *Հասի 'ի վն՝ և գտի՝ զի քաղաքդ այդ յաւիտենից ժամանակաց ապստամբ է· և ընդդէմ թագաւորաց լեալ է: 20 *Եւ թագաւորք հզօրք և բռնաւորք կացեալ են յեէմ· բռնացեալ կալեալ զայն կողմն արևմտից՝ յայն կողմն եփրատ գետոյ· արդ՝ դիք 'ի վն դոցա հարկս՝ և հաս· զի մի և այլ կամակորեալ բռնասցին: 21 *Արդ այժմ տուէք ձեզ տեղեկութիւն երթայք արգելէք՝ և խափանեցէք զգործս նոցա· զի մի շինեսցի քաղաքն: 22 *Եւ մի ներէք նոցա՝ և թուլացուցանէք· այլ փոյթ յանձին կալեալ պահանջել զամենայն հարկս և զհաս· զի մի երբէք բազմասցին՝ և զօրասցին՝ և լիցին ընդդէմ թագաւորաց: 23 *Յայնժամ հարկահանն արասա թագաւորի՝ այսինքն է արտաշէսի՝ բերեալ կարդաց զգիրն առաջի հռէուխմայ՝ և սամսայի դպրի· և ծառայակցաց նոցա: և ելեալ փութապէս յեէմ և 'ի հրէաստան մեծաւ զօրութբ՝ և այր և ձիով՝ արգելին՝ և խափանեցին զհրէայսն 'ի շինելոյ: 24 *Յայնժամ խափանեալ դադարկացաւ գործ տաճարին Տն Այ յեէմ· և էր դադարկացեալ մինչև յերկրորդ ամն դարեհի պարսից:

Ա· Եզր· 2· 26·

դիպասցես

հռէում բաաղտէ մայ

## Գլ: Ե·

1 *Եւ մարգարէանային անգէաս և զաքարիա ադդովայ· մարգարէանային 'ի վն հրէաստանի և եէմ յանունն Տն Այ Իղի: 2 *Յայնժամ յարեան զօրաբաբէլ սաղաթիելեանց· և յեսու յոսեդեկեանց՝ և սկսան շինել զտունն Տն Այ Իղի· և միաբանեալ ընդ նոսա մարգարէքն Այ, օգնէին նոցա: 3 *Յայնմ ժամանակի եկն առ նոսա թաթանայ իշխան կողմանց գետոյն եփրատու· և սաթրաբուզան· և ծառայակիցք նց· և ասեն ցնոսա: ո՞ հրամայեաց ձեզ շինել զտունս զայս· և կամ ո՞ր բանիւ կանգնեցիք զաշտարակս սորա: 4 *Եւ կամ զի՞նչ անուանք են արանցն այնոցիկ· որք են առաջնորդք շինելոյ զքաղաքս զայս: 5 *Եւ էին աչք Տն Այ 'ի վերայ հրէիցն դարձելոյն 'ի գերութենէն· և ոչ խափանեցին զնոսա մինչև տայցեն գիտել դարեհի արքայի: և յայնժամ առաքեցին զհարկահանս վասն իրացս այսոցիկ՝ զի տեղեկասցին գրով: 6 *Եւ այս է գրեալն: Թաթանայ իշխան կողմանց գետոյ՝ և սաթրաբուզան՝ և ծառայակիցք նց· փարսաքէէ և ռէսիմ: 7 *Դարեհի թագաւորի խաղաղութիւն բազում: 8 *Գիտութիւն լիցի թագաւորիդ· զի երթեալ մեր յերկիրն հրէաստանի 'ի քաղաքն յեէմ· տեսաք զտաճարն Տն Այ մեծի· զի շինէին ընտիր քարամբք· և փայտս պահանգս դնէին յորմն: և գործն էր յաջողակ· և յառաջէր 'ի ձեռս նոցա: 9 *Յայնժամ հարցաք ցծերս նոցա՝ և ասեմք· ո՞ հրամայեաց ձեզ շինել ըզ

Անգէ· 1· 1·

1· Եզր· 6· 1·

տունս զայս. և կամ ո՞ր բանիւ հաստատէք զդա: 10 *Եւ խնդրեալ զանուանս առաջնորդացն. զի տացուք տեղեկութիւն ձեզ. և զի գրեսցուք զանուանս արանց իշխանաց նց: 11 *Եւ զայս պատասխանի արարեալ հրէիցն ասեն ցմեզ: մեք եմք ծառայք Տն այ երկնի և երկրի. և շինեմք զտունս զայս. որ և էր շինեալ յառաջ քան զբազում ամս. զոր շինեաց թագաւորն Իլի մեծն սաղոմոն. ըստ այնմ օրինակի և մեք հաստատեմք զսա: 12 *Եւ զի հարքն մեր բարկացուցին զԱծ երկնի և երկրի՝ և ետ զնոսա 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց և քաղդէացւոց: և զտունս զայս քակեաց. և զժողովուրդն պանդխտեցոյց 'ի բաբելոն: 13 *Եւ յառաջնում ամի կիւրոսի թագաւորի բաբելացւոց. կիւրոս թագաւոր հրամայեաց շինել զտունս զայս Տն այ: 14 *Եւ զկահ տանս այսորիկ զարծաթեղէնս և զոսկեղէնս. զորս նաբուգոդոնոսոր էառ յեմէ. և եկն եբեր 'ի տուն աստուծոց իւրոց: առեալ զայն կիւրոսի թագաւորի 'ի տանէ թագաւորին. և ետ ցսամանասար գանձաւոր: 15 *Եւ ասէ ցնա. զամ սպասդ և զկահ առ և երթ յեմէ 'ի տուն Տն որ է անդ. և տար՝ դիր զկահդ 'ի տեղւոջ իւրում: 16 *Յայնժամ սամանասար եկն՝ և էարկ զհիմն տաճարին Տն այ յեմէ. և յայնմ հետէ շինեմք. և ոչ ևս է կատարեալ: 17 *Արդ եթէ բարւոք թուի քեզ թագաւոր՝ այց արա. և տես 'ի տունս պահպանութեանց գրոց յիշատակարանաց թագաւորաց բաբելացւոց. զի գիտասցես թէ արդարև կիւրոս թագաւորն հրամայեաց շինել զտունս Տն 'ի հրէաստանի յերուսաղէմ. և տեղեկացեալ քո թագաւոր վասն իրացս այսոցիկ. առաքեսջիր առ մեզ:

## Գլ: Զ:

‖1.Եզր. 6.23.

1 Յայնժամ ‖ դարեհ թագաւոր այց արար՝ և խնդրեաց՝ և եգիտ 'ի տունս թագաւորացն գրոց յիշատակարանացն 'ի բաբելոնի: 2 *Եւ գտեալ յամաթոսի քաղաքի եկբատանացւոց՝ գլուխ մի գրոյ տումարի. և զայս ինչ գրեալ էր 'ի գիրս յիշատակարանին: 3 *Յամին առաջնում կիւրոսի. կիւրոս թագաւոր ետ հրաման վասն տանն Տն. որ յեմ. ասէ՝ շինեսցի տաճարն Տն. և տեղին՝ ուր զոհեն զզոհսն Տն: և ետ զչափ բարձրութեն կանգունս վաթսուն. և լայնութե կանգունս վաթսուն: 4 *Եւ կարգք երեք 'ի զօրաւոր քարանց: և կարգ մի փայտեղէն. և այսպէս շինեսցի և յարկցի ամենայն տաճարն: 5 *Եւ զկահ տանն Տն՝ զարծաթեղէնս և զոսկեղէնս, զոր եբեր նաբուգոդոնոսոր 'ի տանէ Տն յեմէ՝ և եդ 'ի բաբելոնի: արդ տացեն 'ի բաց. և տարցին 'ի տաճարն Տն յերուսաղէմ. և երթեալ տարցին 'ի տեղի իւր 'ի տունն այ. որ լեալ էր: 6 *Յայնժամ դարեհ ետ զգիր հրամանի իշխանաց կողմանց գետոյն. սաթրաբուզանայ և ծառայակցաց նր 'ի կողմանս գետոյն. և ևս 'ի հեռագոյն տեղիս: 7 *Եւ արդ յայսմ հետէ թոյլ տուք շինել զտունն Աստ իշխանայն հրէից՝ և ծերոցն Իլի. և շինեսցեն զտունն այ 'ի տեղւոջ իւրում: 8 *Եւ իմ հրամայեալ մի ոք արգելցէ զծերս Իլի 'ի շինել զտուն Տն այ իւրեանց: և յիշխանութե թագաւորութե իմոյ. որք են հարկահանք կողմանց գետոյն. Ամ զգուշութբ տացեն զծախս արանցն այնոցիկ՝ և մի խափանեսցեն: 9 *Եւ զորդիս ցլուց՝ և խոյս՝ և ամիկս յողջակէզս Տն Այ երկնից. ցորեան. և աղ. գինի. և ձէթ. ոչ և հրամայեսցեն քահանայապետացն յեմ. և լիցի անխափան տուեալ օրըստօրէ. ոչ և խնդրեսցեն: 10 *Եւ մատուսցեն պատարագ 'ի հոտ անուշից Տն այ երկնի. և արասցեն աղօթս վս կենաց թագաւորի՝ և որդւոց նր: 11 *Եւ յինէն ել հրամանս այս. և Ամ մարդ որ կացցէ ընդդէմ հրամանի իմոյ, քակեսցի տուն նր. և առեալ փայտ 'ի տանէ նր ուղղեսցեն՝ և բևեռեսցեն զայրն 'ի նմա. որ եկաց ընդդէմ հրամանի իմոյ. և եղիցի նմա 'ի նախատինս յաւիտենից: 12 *Եւ Ած որոյ բնակեալ է անուն նր անդ. ելցէ. և աւերեսցէ զթագաւորութիւն և զժողովուրդն. որ յանդգնեցաւ ձգել զձեռն իւր և արգելուլ և ապականել զտունն այ. որ յեմ: ես դարեհ թագաւոր եդի զհրամանս զայս. և մի ոք իշխեսցէ անցանել:

‖1.Եզր. 7.1.

13 *‖Յայնմ ժամանակի իշխան կողմանց գետոյն՝ և սաթրաբուզան, և ծառայակիցք նր. առ որս առաքեաց դարեհ թագաւոր. վաղվաղակի կատարեցին զհրամանս նր: 14 *Եւ ծերքն հրէից՝ և ղևտացիքն շինէին 'ի ժամանակս մարգարէութեն անգեայ՝ և զաքարիայ որդւոյ ադդովայ և շինեցին՝ և հաստատեցին ըստ հրամանին Տն Իլի: և ոչ հրամայեցին կիւրոս թագաւոր՝ և դարեհ. և 'ի ժամանակս արտաշաստայ թագաւորին պարսից: 15 *Եւ որ օր երեք էր ամսոյն ադա_

դա_

դարայ՝ յամին վեցերորդի դարեհի արքային կատարեցաւ տաճարն ։ 16 * Եւ արարին որդիքն իլի՝ և քահանայքն և ղևտացիքն ․ և որք եկեալք էին 'ի գերութենէն, նաւակատիս տանն Տն մեծաւ ուրախութբ ։ 17 * Եւ մատուցանէին 'ի նաւակատիս տանն Տն զուարակս հարիւր ․ խոյս երկերիւր ․ գառինս չորեքհարիւր ․ և ամիկս յայծեաց վն մեղաց ամ իլի, երկոտասան՝ ըստ թուոյ ցեղիցն իլի ։ 18 * Եւ կացուցին զքահանայսն ըստ տեղեաց իւրեանց ․ և զղևտացիսն ըստ վիճակի բաժանմանն իւրեանց 'ի սպասաւորութիւն Տն այ յեմ․ (երկու հազար և երկերիւր) ‖ որպէս և գրեալ է 'ի գիրս մովսէսի ։ 19 * Եւ արարին որդիքն իլի եկեալք 'ի գերութենէն զզատիկն Տն 'ի չորեքտասաներորդի ամսոյն առաջնոյ ։ 20 * Եւ սրբեցան քահանայքն՝ և ղևտացիք ․ և եղեն ամենեքեան սբք ․ և զենին զզատիկն Տն ամ որք եկեալք էին 'ի գերութէն ․ և եղբարք իւրեանց և քահանայք ․ 21 * Եւ կերին որդիքն իլի զզատիկն ամենեքեան ․ որք որոշեալ էին 'ի պղծութեց ազգաց երկրին ․ և որք եկեալ էին առ նա խնդրել զՏր Ած իլի ։ 22 * Եւ արարին զտօն բաղարջակերացն զեօթն օր․ և ուրախ եղեն յեմ․ վնզի ուրախ արար զնս Տր Ած ։ և Տր դարձոյց զսիրտ թագաւորին ասորւոց առ նս․ զի օգնեսցէ, և զօրացուսցէ զձեռս նոցա 'ի գործ տաճարին Տն այ իսրայելի ։

Ա Թագաւորաց 3. 6. և 8. 9. — ամենեցեան

## ԳԼ: Է.

Ա. Եզրա. 8. 1.

1 Եւ ‖ յետ բանիցս այսոցիկ 'ի թագաւորութեն արտաշէսի արքային պարսից ․ ել եզրաս որդի սարուայ ․ որդւոյ ազարիայ ․ որդւոյ քեղկեայ ։ 2 * Որդւոյ սեղումայ ․ որդւոյ սադովկայ ․ որդւոյ աքիտօբայ ։ 3 * Որդւոյ սամարիայ ․ որդւոյ եզրայ ․ որդւոյ մարօթայ ։ 4 * Որդւոյ զարեայ ․ որդւոյ ոզիայ ․ որդւոյ բոկայ ։ 5 * Որդւոյ աբիսուայ ․ որդւոյ փենեհեսի ․ որդւոյ եղիազարու ․ որդւոյ ահարօնի առաջնոյ քահանայի ։ 6 * Այս եզրաս՝ որ ել 'ի բաբելոնէ ։ և սա էր դպիր արագագիր օրինացն մովսէսի՝ զոր ետ Տր Ած իլի ․ և ետ նմա թագաւորն զամ․ զորինչ խնդրեաց 'ի նմանէ ․ զի ձեռն Տն այ էր ընդ նմա ։ 7 * Եւ ելին ընդ նմա յորդւոցն իլի՝ և 'ի քահանայից՝ և 'ի ղևտացւոց՝ և յերգեցիկ սպասաւորաց՝ և 'ի դռնապանաց՝ և 'ի նաթանայեցւոցն յեմ․ յամին եօթներորդի արտաշէսի թագաւորի ։ 8 * Եկին յեմ յամսեանն եօթներորդի ․ որ էր ամ եօթներորդ թագաւորին ։ 9 * Եւ յամսեանն առաջնոյ եօթներորդի ամսեանն եկն եզրաս յեմ․ վն զի ձեռն Տն այ բարութբ էր ընդ նմա ։ 10 * Եւ եդ եզրաս 'ի սրտի իւրում խնդրել զօրէնսն Տն ․ և գրել զնա ․ և ուսուցանել իլի զհրամանս և զդատաստանս ։ 11 * Եւ այս են իրք հրամանի ․ զոր ետ արտաշէս թագաւոր եզրի քահանայի՝ և գրչի գրոց բանի օրինացն Տն ․ և հրամանաց նր 'ի վր իլի ։ 12 * Արտաշէս թագաւորաց թագաւոր ․ եզրի գրչի օրինացն Տն այ երկնից ։ 13 * Ամենայն հաստատութբ ետու ես հրաման 'ի վր ամենեցուն՝ որք են ընդ թագաւորութբ իմով ․ և ժողովրդոցն իլի՝ և քահանայիցն ․ և ղևտացւոցն ․ զի ելցեն ամենեքեան յերուսաղեմ ընդ քեզ ։ 14 * Յերեսաց թագաւորի, և եօթն խորհրդակցացն առաքեցաւ գիրս այս ․ այց առնել հրէիցն՝ և երուսաղեմացւոցն առաջնորդութբ եզրի ․ որոյ են օրէնք Ած 'ի ձեռին իւրում ։ 15 * Եւ հրամայեաց թագաւորն տալ 'ի տունն Տն արծաթ և ոսկի ․ հանդերձ խորհրդակցօք իւրովք յեմ․ և դնել 'ի տաճարին առաջի Տն այ իլի ։ 16 * Եւ ամ, որոյ գտցի արծաթ և ոսկի՝ հրէայք որք իցեն պանդուխտք 'ի բաբելոն՝ ժողովուրդք և քահանայք, առցեն ընդ իւրեանս ․ և տարցին 'ի տունն Տն յեմ ։ 17 * Եւ ամենեքեան ․ որք ելցեն ․ պատրաստեսցեն զայս օրինակ ․ որպէս և գրեցաք ․ զուարակս ․ խոյս՝ գառինս՝ և զզոհս և զնուէրս իւրեանց ․ և մատուսցեն 'ի վր սեղանոյ Տն այ իւրեանց յեմ ։ 18 * Եւս առաւել վասն քո՝ ասէ ․ և վն եղբարց քոց արարէք բարութիւ՝ և թողի արծաթ և ոսկի ․ որպէս վայել է Ած ձերոյ՝ արարէք ։ 19 * Եւ զկահ տուեալ քեզ 'ի սպասաւորութիւն տան Տն ․ ա՛ռ ընդ քեզ՝ և տա՛ր յեմ ։ 20 * Եւ զաւելորդսն տաջի՛ր 'ի պահեստ գանձու տան թագաւորաց ։ 21 * Եւս արտաշէս թագաւոր ետու հրաման ամենայն գանձաւորաց ․ որք իցեն յայնկոյս եփրատ գետոյն ․ զամենայն ինչ՝ որ և խնդրիցէ 'ի ձէնջ եզրաս քահանայ և դպիր օրինացն Տն այ երկնից ․ տաջի՛ք 'ի տունն Տն Ած նորա ։ 22 * Պատրաստ արարէք արծաթ տաղանդս հարիւր ․ և ցորեան քոռս հարիւր ․ և գինի նոյնչափ ․ և ձէթ նոյնչափ ։ 23 * Եւ մի՛ ոք կացցէ ընդդէմ հրամանաց թագաւորի ․ ամ ինչ՝ զոր հրամայեսցի 'ի տունն Տն Ած երկնից և երկրի՝ այն եղիցի ․ և մի՛ ոք ձեռնարկեսցէ

խա-

խափանել՚ի տանէ Տն Այ Իլի. զի մի եղիցի բարկութիւն՚ի Տէ Այ՚ի վր թագաւորութե իմոյ՝ և որդւոյ իմոյ: 24 * Եւ եստ ձեզ գիտել՝ թէ զամ, որք իցեն ՚ի քահանայից՝ և ղևտացւոց՝ և ՚ի սաղմոսերգողացն՝ դռնապանացն՝ և նաթանայացւոցն. և որք իցեն սպասաւորք տանն Այ՝ մի տացեն հարկս՝ և մի ոք իշխեսցէ ծառայեցուցանել զնոսա: 25 * Եւ դու Եզրաս՝ որոյ է իմաստութի Այ ՚ի ձեռս քում. կացո դպիրս և դատաւորս՝ զի դատեսցեն զամ ժողովուրդս. որք են յայն կողմն գետոյն. և ուսուսցեն ամենեցուն՝ որք ոչ գիտիցեն զօրէնս Այ քոյ. և ամենեքեան որք ոչ գիտիցեն: 26 * Եւ ամենեքեան որք ոչ առնիցեն ըստ օրինացն Տն՝ և ըստ օրինաց թագաւորին՝ մատնեալք լիցին ՚ի դատաստան ըստ գործոց իւրեանց. եթէ ՚ի մահ. եթէ ՚ի տանջանս. և եթէ ՚ի տուգանս. և եթէ ՚ի կապանս:

27 * Օրհնեալ է Տր Ած հարցն մերոց՝ որ էարկ զայս ՚ի սիրտ թագաւորին՝ և փառաւորեաց զտունն Տն Այ մերոյ. որ է յԵմ: 28 * Եւ արար առ իս զողորմութի՝ և պատուեաց զիս առաջի թագաւորին՝ և խորհրդակցաց նր. և առաջի ամ իշխանաց թագաւորին. և ես զօրացայ. վզի ձեռն Տն ամ բարութբ էր ընդ իս. ժողովեցի զամ իշխանս Իսրայէլի ելանել ընդ իս:

## Գլ: Բ:

1 Եւ այսոքիկ են իշխանք հայրապետացն՝ որք ելանէին ընդ իս ՚ի թագաւորութեն Արտաշէսի թագաւորի բաբելացւոց: 2 * Յորդւոցն փենեհեսի՝ գերսոն. և յորդւոցն իթամարայ՝ դանիէլ. և յորդւոցն դաւթայ՝ տուս: 3 * Եւ յորդւոցն նաաքա՝ նեա: և յորդւոցն փորոսայ՝ զաքարիա. և ը̃ նմա արք հարիւր և յիսուն: 4 * Եւ յորդւոցն փաաթ՝ մովաբ. եղիանայ որդի զարայ՝ և ընդ նմա երկերիւր արանց: 5 * Եւ յորդւոցն զատուիէլ սեքենիայ որդի ազիէլի. և ը̃ նմա երեք հարիւր արանց: 6 * Եւ յորդւոցն ադինայ աբէն որդի յօնաթանայ. և ընդ նմա յիսուն արանց: 7 * Եւ յորդւոց եղամի խաախաս որդի աթաղիայ. և ը̃ նմա եօթանասուն արանց: 8 * Եւ յորդւոցն սափատիայ զամբդիա որդի միքայէլի. և ընդ նմա եօթանասուն արանց: 9 * Եւ յորդւոցն յովաբայ բադիա որդի յեհիէլի. և ը̃ նմա երկերիւր և ութն և տասն արանց: 10 * Եւ յորդւոցն բաանայ սեղիմութ որդի յօսէփիա. և ընդ նմա հարիւր և վաթսուն արանց:

11 * Եւ յորդւոցն բաբէի զաքարիաս որդի բաբի. և ընդ նմա քսան և ութն արանց: 12 * Եւ յորդւոցն ադօնիկամայ. և ազգատայ՝ յօնան որդի սակատանայ. և ընդ նմա հարիւր և տասն արանց: 13 * Եւ յորդւոցն ադօնիկամ, եւքարի. և այսոքիկ են անուանք նց. եղիփաղաթ. յեհիէլ. և սամա. և ընդ նմա վաթսուն արանց: 14 * Եւ յորդւոցն բագուհի. ութայի. և զաբութ. և ընդ նմա եօթանասուն արանց: 15 * Եւ ժողովեցի զնոսա առ եղր գետոյն որ դայ յեհի. և առեալ անդ օթեվանս աւուրս երիս. և ՚ի բաղմութի ժողովրդեանն յորդւոց քահանայիցն՝ և յորդւոց ղևեայ ոչ գտի զոք: 16 * Եւ առաքեցի առ եղեազար և առ արիել. և առ սեմեայ. և զառնաամ. և զարիբ. և զեղնաթան. և զնաթան. և զզաքարիայ. և զմեսաղամ. և զյովարիբ. և զյեղմաթամ: 17 * Եւ իմացուցեալ ածին զնոսա առաջի իշխանացն. որք էին ՚ի տեղւոջ գանձաւորացն. և եդի բան ՚ի բերանս նոցա՝ խօսիլ ընդ եղբարս իւրց. նաթանիմ որ էր ՚ի տեղի գանձաւորացն. զորս ածին առ մեզ. որք երգէին՚ի տան 18 Այ մերոյ: * Եւ եկին առ մեզ. քանզի էր ձեռն Տն՚ի բարութի ընդ մեզ. յորդւոցն ղևեայ յորդւոցն Իլի. և զառաջինն եկին առ մեզ որդիք նր և 19 եղբարքնորա ութն և տասն: * Եւ ասեբիա՝ և յեսեա որդի մերարեայ՝ և եղբարքնր և որդիք նորա արք քսան: 20 * Եւ՚ի նաթանայ. զոր ետ դաւիթ և իշխանքն ՚ի ծառայութի ղևտացւոցն. և ՚ի նաթանայիմ երկերիւր և քսան. ամենեքեան ժողովեցան ըստ 21 անուան իւրց: * Եւ քարոզեցաք անդ պահս առ եղր գետոյն աէիա. և մատուցաք անդ աղօթս առաջի Տն Այ մերոյ խնդրել ՚ի նմանէ զճանապարհ ուղղութե մեզ և որդւոց մերոց՝ և ամի 22 որ ընդ մեզ: * Վասն զի ամաչեցաք խնդրել՚ի թագաւորէն հեծեալս ապրեցուցանել զմեզ ՚ի թշնամեացն մերոց՝ ՚ի ճանապարհին. վզի ասացաք ցթագաւորն այսպէս. եթէ ձեռն Տն մերոյ օգնէ ամենեցուն. որք խնդրեն զնա ՚ի բարութի: և զօրութի նորա՝ և բարկութի նորա ՚ի վր ամե 23 նեցուն. ոյք թողուն զնա: * Եւ պահեցաք. և խնդրեցաք յԱյ մերոյ վն 24 այսր ամենայնի. և լուաւ Տր: * Եւ առաքեցաք յիշխանացն քահանայից երկոտասան զսարաբիայ. և զասաբիայ և ընդ նոսա յեղբարց նց տասն:

* Եւ

25 * Եւ կշռեցայց և տուայց նոցա՝ զարծաթ և զոսկի. և զսպաս առաջաւորութեան տանն այ մերոյ. որ բարձրացոյց զմեզ թագաւորն, և խորհրդակիցք նր՝ և իշխանք նր՝ և ամ իէլ՝ որք միանգամ էին անդ ։ 26 * Եւ կշռեալ ետու ցնա արծաթ տաղանդս վեցհարիւր և յիսուն. և կահ արծաթոյ հարիւր. և ոսկւոյ տաղանդս հարիւր ։ 27 * Եւ այլ կահ ոսկւոյ քսան և երիս. և կահ պղնձոյ սուրբ և մաքուր ոսկեզօծ. 28 * Եւ ասացի ցնոսա. և դուք սրբեալք Տն ԱՅ էք. և ամ կահ սուրբ է Տն. և ոսկեղէնք և արծաթեղէնք ընտրեալք Տն ԱՅ հարցն մերոց ։ 29 * Արթուն կացէք՝ և պահեցէք՝ մինչև կշռեսջիք զդոսա առաջի իշխանաց քահանայիցն՝ և ղևտացւոցն. և հայրապետացն Իէլի՝ որք են յերուսաղէմ՝ 'ի խորանս տանն Տն ։ 30 * Եւ առեալ քահանայիցն, և ղևտացւոցն զհամար ոսկւոյ և արծաթոյ՝ և զկահս 'ի տանել յեէմ 'ի տուն ԱՅ մերոյ ։ 31 * Եւ յարուցեալ չուեցաք 'ի գետոյն եաւ՝ որ օր երկոտասան էր ամսոյն առաջնոյ. և եկեալ հասաք յեէմ. և ձեռն ԱՅ մերոյ էր ընդ մեզ. և փրկեաց զմեզ 'ի ձեռաց թշնամեաց մերոց և 'ի պատերազմողաց զճանապարհայն ։ 32 * Եւ եկաք յեէմ. և հանգեաք անդ աւուրս երիս ։ 33 * Եւ յաւուրն չորրորդի կշռեալ տուաք զարծաթ և զոսկի և զկահ 'ի տուն Տն այ մերոյ. 'ի ձեռս մարեմովթ որդի ուրիայ քահանայի. և որ էր ընդ նմա. եղեազար որդի փենէսի. և յովսաբաթ որդի յեսուայ. և նովադիա որդի բանեայ. և այլք ղևտացիք ։ 34 * Եւ էր թուով և համարով ամ. և գրեցաւ ամ կշիռ համարոյն բովանդակ ։ 35 * Եւ 'ի ժամանակին յայնմիկ. որք եկեալ էին 'ի գերութենէ որդիք պանդխտութեան, մատուցին ողջակէզս Տն ԱՅ Իէլի, զուարակս երկոտասան վն ամ Իէլի. խոյս իննսուն և վեց. գառինս եօթանասուն և եօթն. ամիկս վասն մեղաց երկոտասան. զայս ամ ողջակէզս մատուցին Տն այ ։ 36 * Եւ ետուն զգիր կարաւոյն. զոր հրամայեալ էր թագաւորին ցիշխանսն կողմանց գետոյն եփրատու. և փառաւորեցին զժողովուրդն և զտաճարն այ ։

## Գլ. Թ.

Ա.Եզր 1.69.

1 Եւ 'ի կատարել այսր ամի՝ մերձեցան առ իս իշխանքն՝ և ասեն. ոչ որոշեցան ժողովուրդն Իէլի. և քահանայքն՝ և ղևտացիքն՝ 'ի ժողովրդոյ՝ և յերկրէ. որք են հեռագոյն 'ի նոցանէ. քանանացին. և քետացին. և փերեզացին. և յեբուսացին. և ամոնացին. և մօաբացին. եգիպտացին. և ամորհացին ։ 2 * Զանզի առարին կանայս 'ի դստերաց նց. ինքեանք՝ և որդիք իւրեանց. և խառնակեալ պղծեցաւ սերմն սրբութեն նոցա ընդ ժողովուրդ երկրին այնորիկ. և եղև սկիզբն անօրէնութեա այսորիկ յիշխանացն ։ 3 * Եւ եղև յորժամ լուայ ես զբանս զայսոսիկ. պատառեցի զհանդերձս իմ. և փետտեցի զհերս և զմօրուս իմ. և այնպէս նստէի 'ի սուգ ։ 4 * Եւ ժողովեցան առ իս ամենեքեան. որք էին երկիւղածք յԱՅ Իէլի. որք էին ժողովեալ յեղլիցն պանդխտութե. և ես այնպէս նստէի 'ի սուգ մինչև 'ի ժամ զոհի երեկորին ։ 5 * Եւ 'ի զոհել երեկորին՝ յարեայ 'ի տառապանաց իմոց. և պատառեալ հանդերձիւք իմովք խոնարհեալ ( հանդերձիւք իմովք. և խոնարհեալ ) կործանեցի 'ի վերայ ծնգաց իմոց. և տարածեալ համբարձեալ զձեռս իմ, առ Տր ԱԾ ։ 6 * Եւ ասեմ. Տր ԱԾ իմ, և Տր. ամաչեմք՝ զարհուրիմք 'ի քէն. բարձրացո ԱԾ իմ զերեսս իմ առ քեզ. վն զի անօրէնութիւնք մեր բազմացան 'ի վերայ գլխոց մերոց. և մեղք մեր մեծացան. և բարձրացան մինչև յերկինս ։ 7 * Յաւուրց և 'ի ժամանակաց հարցն մերոց. և եմք մեք 'ի մեղս մեծամեծս մինչև ցայս օր. և վն մեղաց մերոց մատնեցեր զմեզ՝ և զթագաւորս մեր՝ և զորդիս մեր՝ 'ի ձեռս թագաւորացն հեթանոսաց. և 'ի սուր՝ և 'ի գերութի՝ և 'ի յափշտակութի. և յամօթ երեսաց մերոց եղեաք մինչև յօրս յայս ։ 8 * Եւ այժմ գթութիւնք քո եղեն 'ի վերայ մեր Տէր ԱԾ մեր՝ և շնորհեցեր մեզ փրկութի. և հաստատեցեր զմեզ 'ի տեղի սրբութե քոյ. և լուսաւորեցեր զաչս մեր այսօր Տր ԱԾ մեր. և ետուր մեզ կենդանութի փոքր 'ի շատէ 'ի ծառայութեն մերում ։ 9 * Վասն զի ծառայք եղեաք. և 'ի ծառայութեն մերում ոչ թողեր զմեզ Տր ԱԾ մեր. և խոնարհեցան առ մեզ ողորմութիւնք քո առաջի թագաւորին պարսից տալ մեզ 'ի կենդանութի. և բարձրացուցանել զտուն ԱՅ մերոյ՝ կանգնել՝ և շինել զանապատս զայս. և արկանել ցանգ և պարիսպ ամրութե 'ի յուդայ և յերուսաղէմ ։ 10 * Եւ արդ զինչ տացուք պատասխանի առաջի քո Տր. վասն այսր ամի. քանզի անցաք զօրինօք քովք Տր՝ և զհրամանօք ։

* Զոր

ձիթոյ 'ի գանձանակ տան ՏՆ։ 13 * Եւ
հրամայեցի տալ 'ի ձեռս Եղեմիայ քա_
հանայի՝ և սադովկայ դպրի. և փա_
դայիայ. որ էր 'ի ղևտացւոցն. և 'ի
ձեռանէ նոցա անան որդի զաքուր.
որդի մաթանիայ. վ՟ զի հաւատարիմք
էին նոքա. որք բաժանէին՝ և տային
եղբարց իւրեանց։ 14 * Յիշեսցէ զիս
Տ՟Ծ յայնմ ժմի. և մի՛ 'ի բաց արասցէ
զողորմութի իւր յինէն. վասն զի արա
րի զայս ամենայն 'ի տանն ՏՆ Ա՟Յ իմ։
15 * Յաւուրսն յայնոսիկ տեսանէի 'ի
հրէաստանի՝ զի հարկանէին հնձանս
յաւուր շաբաթու. և բերէին զորայս
ընդ դրունսն յերուսաղէմ. և կախէին
բեռն գրաստուց. զգինի և զխաղող
և զթուզ. բարձեալ բեռինս բերէին
յերուսաղէմ յաւուր շաբաթու. և կա
լեալ վկայս զի վաճառէին յաւուրն
շաբաթու։ 16 * Եւ նստէին 'ի տեղիս վա
ճառացն. որք բերէին զձուկն և զա՟մ
վաճառս. և գնէին յաւուր շաբաթու
հրեայքն 'ի ներքս յերուսաղէմ։
17 * Եւ կագեցայ ես ընդ որդիսն հրէից՝
որք էին յերուսաղէմ. և ընդ իշխանսն
յուդայ. և ասեմ ցն՟ա. զինչ է անօրէ
նութիս այս. զոր դուքդ գործէք՝ և
պղծէք զաւուրս սուրբ զշաբաթու։
18 * Ոչ այսպէս արարին հարքն ձեր՝ և
էած 'ի վ՟ր ն՟ց Տ՟Ծ զչարիս զայս ա՟մ.
և 'ի վ՟ր քաղաքիս այսորիկ. և արդ՝
դուք ընդ էր յաւելուք զբարկութի 'ի
վերայ ի՟ՂԻ. և պղծէք զօրն սուրբ ըզ
շաբաթուց։ 19 * Եւ եղև յորժամ կանգ
նեցի զդրունս երուսաղէմի՝ յառաջ_
քան զշաբաթն հրամայէի փակել ըզ
դրունսն՝ և ոչ տայի բանալ զնոսա մին
չև անցանէր շաբաթն. և դարձեալ
կացուցի մանկունս պահապանս. զի մի՛
ոք իշխեսցէ մտանել բեռամբ յաւուր
շաբաթու ընդ դրունսն ե՟ղմի։ 20 * Եւ
ագանէին ամենեքեան, որք վաճա_
ռէին՝ արտաքոյ երուսաղէմի միան_
գամ՝ և երկիցս։ 21 * Եւ ասեմ ցնոսա՝
ընդէ՞ր ագանիք դուք արտաքոյ պարս
պիդ. եթէ և այլ տեսանեմ զանօրէ
նութիդ զայդ՝ տամ հրաման այսպէս՝
զի ո՛չ մտանիցէք դուք 'ի շաբաթս մեր՝
և 'ի քաղաքս։ 22 * Եւ ասեմ ցղևտացիսն՝
որք էին սրբեալք՝ և գային պահէին
զդրունսն. և սրբէին յաւուր շաբա_
թու. և յայնմ հետէ ո՛չ պղծեցին զշա_
բաթսն. և յայսմ ամենայնի յիշեսցէ
զիս Տ՟Ծ՝ և խնայեսցէ յիս ըստ բա_
զում ողորմութե իւրում։ 23 * Եւ յաւ_
ուրսն յայնոսիկ տեսի զհրէայսն. զի
նստէին կանայք ազօտացիք՝ և ամ
նացիք՝ և մովաբացիք։ 24 * Եւ որդիք
նոցա. և ոմանք 'ի կանանցն խօսէին
ազօտացի. և ոչ գիտէին խօսիլ հրէա
րէն։ 25 * Եւ կագեցայ ընդ նոսա. և նը
զովեցի զն՟ա. և հարի 'ի նոցանէ արս
բազումս. և երդմնեցուցի զնոսա յա_
նուն ա՟յ. զի մի՛ տացեն զդստերս իւ_
րեանց որդւոց նոցա. և մի՛ զդստերս
նոցա ածցեն որդւոց իւրեանց։ և ասեմ
ցնոսա։ 26 * ‖ Ո՞չ յայդմ ա՟մի մեղաւ սա_
ղոմոն թագաւոր ի՟ՂԻ. և ո՞վ էր իբրև
զնա իմաստուն յա՟մ թագաւորս մեր.
և սիրելի էր նա Ա՟Յ. և կացոյց զնա
Տ՟Ծ թագաւոր 'ի վ՟ր ամենայն ի՟ՂԻ.
‖ և զայսպիսի սիրելի Ա՟Յ՝ և զիմաս_
տուն, և զմեծ թագաւոր, խոտորե_
ցուցին. և յանցուցին 'ի մեղս կանայք
այլազգեայքն։ 27 * Եւ արդ՝ մի՛ լուայց.
եթէ ոք արասցէ զայնպիսի մեծ չա_
րութիւնս. և մեղիցէ առ Տ՟Ծ. և ա_
ռասցէ զկին այլազգի։ 28 * Եւ յորդւոյն
յովիդեայ՝ և յեղիասիբայ մեծ քահա
նային լուայ՝ եթէ էր կին ն՟ր դուստր
սանաբաղատայ. և մերժեալ հալածե
ցի զն՟ա յինէն։ 29 * Յիշեսցէ զնոսա Տ՟Ծ
'ի ժառանգութե և յուխտի քահա_
նայութե։ 30 * Եւ զղևտացիսն սրբե_
ցի յամենայն այլազգեաց՝ և կարգեալ
կազմեցի զնոսա օրըստօրէ՝ զքահա_
նայսն և զղևտացիսն, այր իւրաքան_
չիւր 'ի գործ իւր։ 31 * Եւ ետու կազմ
բերել զամենայն փայտ ողջակիզացն
յիւրաքանչիւր ժամանակս. և զաւա
ջաւորսն պտղոյ իւրեանց. յիշեսցէ
զիս Տ՟Ծ մեր յամենայն բարութիս ար
դարութե. այն որ օրհնեալն է յաւի_
տեան՝ ամէն։

‖ 3 Թագ. 3. 1. և 11. 1.

‖ 3 Թագ. 11. 4.



Եւ ասէ հրեշտակն պատանեկին․ բո՛ւռն հար և կա՛լ զձուկնդ․ և կալաւ պատանեակն․ Տօբ․6․4․



Եւ ցանէր նա զլեղին յաչս հօրն իւրոյ․ և ասէր․ ժուժեա՛ հայրիկ․ և համբերեա՛․ Տօբ․ 11․13․

# ԳԻՐՔ ՏՕԲԻԹԱՅ․

## Գլուխ Առաջներորդ։

1 ԳԻՐՔ ԲԱՆԻՑ ՏՕբիթայ որդւոյ Տօբիէլեայ․ որդւոյ Անանիէլեայ․ որդւոյ Ադուէլեայ․ որդւոյ Գաբայելեայ․ 'ի զաւակէն Ասիելեայ․ յազգէ Նեփթաղիմայ։ 2 * Որ գերեցաւ յաւուրս ‖ Ենեմեսարու թագաւորին Ասորեստանեայց 'ի Թեզբուէ․ որ է ընդ աջմէ կողմանցն Նեփթաղիմայ․ 'ի գալիլեայ 'ի վերոյ Ասերի։

3 * Ես Տօբիթ զճանապարհս ճշմարտութեան գնացի՝ և յարդարութեան զամենայն աւուրս կենաց իմոց․ և ողորմութիւնս բազումս արարի ես եղբարց իմոց՝ և ազգին իմում, որք ընդ իմն եկին յերկիրն Ասորեստանեայց 'ի Նինուէ։ 4 * Եւ յորժամ էի ես 'ի գաւառին իմում յերկրին Իսրայէլի․ և մինչդեռ մանուկն էի․ ամենայն ազգն Նեփթաղիմայ հօրն իմոյ մերժեցան՝ և 'ի բաց եղեն 'ի տաճարէն Երուսաղէմի․ զոր ընտրեալն էր յամենայն ազգացն Իսրայէլի զոհել յամենայն տոհմս․ և սրբեցաւ տաճարն բնակութեան բարձրելոյն․ և շինեցաւ յամենայն աւուրս յաւիտենից։ 5 * Եւ ամենայն ազգքն որք ապստամբքն էին ‖ 'ի զոհել բահաղու երինջուն․ և տունն Նեփթաղիմայ հօրն իմոյ։ 6 * ‖ Եւ ես միայն երթայի բազում անգամ յԵրուսաղէմ 'ի տօնս տարեկանացն․ որպէս և գրեալ է ամենայն Իսրայէլի հրամանաւ յաւիտենից․ զպտուղս և զտասանորդս արդեանց․ և զպատարագսն․ և տայի զայն քահանայիցն որդւոցն Ահարոնի․ առ սեղանոյն յամենայն արդեանցն․ և զտասանորդն տայի որդւոցն Ղևեայ․ որք պաշտօնեայքն էին Երուսաղէմի։ 7 * Եւ զերկրորդ տասանորդն ծախէի՝ և վաճառէի․ և երթայի ծախէի զայն յԵրուսաղէմ

ըստ

Դ Թագ․ 17․3․

3 Թագ․ 12․ 28․

Ղևտ․ 22․29․

2․ Օրէն․ 12․6․

ըստ ամենայնի տարեկանի ։ * Եւ զեր 8
րորդն տայի՝ որոց արժան էր ․ որպէս պատ
ուիրեաց Դեբօրա մայր հօրն իմոյ ․
զի որբ մնացեալ էի ես 'ի հօրէն իմմէ ։
‖ Թուոց 36. 6. *‖ Եւ յորժամ եղէ այր՝ առի ես ինձ կին 9
զաննայ 'ի զաւակէ հայրենեաց իմոյ ․
և ծնայ ես 'ի նմանէ զտոբի ։ * Եւ 10
յորժամ գերի վարեցայ 'ի Նինուէ ․
ամ եղբարք իմ և ազգք իմ ուտէին 'ի
հացէ անտի հեթանոսացն ։ * Եւ ես 12
պահեցի զանձն իմ ․ զի մի կերայց ․ քան
զի յիշէի ես զԱծ յամենայն անձնէ իմ
մէ ։ * Եւ ետ ինձ բարձրեալն շնորհս 13
և գեղեցկութիւն առաջի նեմեսա
րայ ․ և էի նորա վաճառական ։ * Եւ եր 15
թայի ես 'ի մարս ․ և եդի ես 'ի պա
հեստի առ գաբայելայ եղբօրն գա
բրիայ ․ 'ի հռագայ յերկիրն մարաց՝ ար
ծաթոյ քանքարս տասն ։ * Եւ յոր 18
ժամ մեռաւ նեմեսար և թագաւո
րեաց սենեքերիմ որդի նորա փոխա
նակ նորա ․ և զի էր խռովութի՝ յաւուրս
նորա ․ ոչ եղև ինձ երթալ յերկիրն մա
րաց ։ * Եւ յաւուրսն նեմեսարայ ողոր 19
մութիս բազումս առնէի ես եղբարց
իմոց ։ * Ահաց իմ տայի քաղցելոց ։ և 20
զձորձս իմ մերկոց ․ և զոր տեսանէի ես
յազգէն իմմէ եթէ մեռանէր ․ և ընկե
նուին զնա արտաքոյ պարսպին ․ և ես
թաղէի ։ և կամ թէ յորժամ սպանա
‖ 4 Թագ. 19. 35. նէր զոք սենեքերիմ արքայ ։ * ‖ Յոր 21
ժամ եկն փախստական 'ի հրէաստա
Սիրաք. 48. 24. նէ ․ գողանայի՝ և թաղէի զնոսա ․ վս
զի զբազումս կոտորեաց սրտմտութբ
Եսայ. 37. 36. իւրով ․ և յետոյ խնդրէր արար մարմնոց
դիականցն ․ և ոչ գտաւ ։ * Եւ եմուտ 22
1. Մակ. 7. 41. միոմն 'ի նինուէացւոց անտի ․ և խմա
ցուցանէր թագաւորին վս իմ զդիա
2. Մակ. 8. 19. կանան թաղելոյ ․ և թաքեայ ․ զի գի
տացի ես ․ եթէ խնդրեն սպանանել
2. Մնաց. 32. 21. զիս ․ և զահի հարեալ փախստեայ գնա
ցի ։ և յափշտակեցան ամ ինչք իմ ։
* Եւ ոչ մնաց բնաւ ինչ ․ բայց միայն 23
աննա կինն իմ ․ և տոբի որդին իմ ։
* Եւ ոչ անցին աւուրք յիսուն ․ մինչև 24
‖ 4 Թագ. 19. 37. ‖ սպանին զնա երկոքին որդիքն իւր ․
և փախեան նոքա 'ի լերինս հայոց ։ և
2. Մնաց. 32. 21. թագաւորեաց ասորդան որդի նորա
ընդ նր ․ և կարգեաց նա զաքիաքարոս
Եսայ. 37. 38. զանայէլ զորդի եղբօր իմոյ 'ի վր ամ
իշխանաց թագաւորութեն իւրոյ ․ և
'ի վերայ ամի տան իւրոյ ․ և աղաչեաց
աքիաքարոս զթագաւորն վս իմ ։ * Եւ 25
եկին դարձուցանել զիս ․ և եկի ես 'ի
նինուէ ․ և էր աքիաքարոս տակառա
պետ ․ և ամ գիր համարոյ՝ ելի մտին
տան թագաւորին՝ 'ի ձեռն նորա ․ և
կացոյց զնոսա քերդոյն երկրորդ իւր ․

էր նա եղբօր որդի իմ ․ և յորժամ
եկի ես 'ի տունն իմ ․ և ետուն ինձ զան
նայ զկինն իմ ․ և զտոբի զորդին իմ ։

## Գլ ։ Բ ։

1 Եւ 'ի տօնին մեծի ․ որ է սուրբ
յեօթներորդ շաբաթուն ․ և
արարին ինձ ճաշ մեծ ․ և բազմեցայ
2 ուտել՝ և ըմպել ։ * Եւ տեսի ես առա
ջի իմ խորտիկս բազմապատիկս ․ և
ես ասեմ ցորդին իմ ․ երթ՝ և ած զո
յեղբարցն մերոց յաղքատաց ․ զորս
3 և գտանես ․ և ես մնամ քեզ ։ * Եւ եկն՝
և ասէ ․ հայր՝ միոմն յազգէս մերմէ ․
որոյ են թափեալ ոտք նր ․ և անկեալ
պճղունք նորա ․ և կայ 'ի հրապարակի
4 անդ մեռեալ ։ * Եւ իմ մինչև էր ճա
շակեալ՝ չոգայ , և առի զնա՝ և բերի
'ի տուն իմ ․ մինչև եմուտ արեգակն ։
5 * Եւ ընդ երեկս լուացայ ․ և ուտէի
6 զհացն իմ տրտմութբ ։ * Եւ յիշեցի
ես զմարգարէութիւն ամօսայ ‖ որպէս և ‖ Ամովս. 8. 10.
ասացն ․ դարձցին տարեկանք ձեր 'ի
սուգ ․ և ամենայն ուրախութիք ձեր 1. Մակ.
7 'ի տրտմութի ․ և լայի յոյժ ։ * Եւ յոր 1. 41.
ժամ՝ եմուտ արեգակն ․ փորեցի՝ և
8 թաղեցի զնա ։ * Եւ մերձաւորքն իմ
այպն առնէին՝ և ասէին ․ ‖ արդ ոչ ևս ‖
երկնչի 'ի մեռանիլ վասն իրացս այսո 1. 22.
ցիկ ․ զի վս որոյ հալածեցաւն ․ դար
ձեալ եկեալ թաղէ զդիականունս ։
9 * Եւ 'ի նմին գիշերի դարձայ՝ իբրև
10 թաղեցի ։ * Եւ ննջեցի պղծեալ առ
որմոյ գաւթին ։ և զերեսս իմ ոչ
18 ծածկեցի ։ * Եւ ոչ գիտէի եթէ ճնճ
ղուկք նստին յառաստաղս անդ ․ և
աչօք բացօք 'ի վեր հայէի ․ և ծրտէին
ձագքն ջերաջերմ յաչս իմ ․ և երթեալ
իմ առ բժիշկս ոչ ինչ օգնէին ինձ ․ և
աքիաքարոս դարմանէր զիս ուղղկօք
իւրովք ․ մինչև չոգայ ես յելիմայիդայ ։
19 * Եւ կինն իմ՝ մանէր՝ և գործէր ձե
20 ռօք ․ և տայր տերանցն ։ * Եւ նոքա
տային զվարձսն նորա ․ և յաւելլին ․ և
21 ետուն նմա ուլ մի ևս ։ * Եւ յորժամ
եկն նա առ իս ․ սկսաւ կաղել ընդ իս ․
և ասեմ ես ցնա ․ ուստի՛ բերեր զուլդ
զայդ ․ միթէ գողունի է ․ տուր անդր
ցտեարս իւր ․ ‖ զի ոչ է ինձ օրէն ու ‖ 2. Օրին.
22 տել զգողունի ։ * Եւ ասէ կինն , պա 22. 1.
տիճ ետուն ինձ վասն վարձուց իմոց ։
և ես անհաւատացի նմա ․ այլ ստի
պէի տալ ցտեարս իւր ․ և ես իբրև
զամօթի հարկանէի 'ի նմանէն ․ և նա
ասէ ցիս ․ ‖ ո՞ւր են արդ ողորմութիքդ ‖ Յոբ.
քո՝ և արդարութիքդ ․ զի ահաւասիկ 2. 9.
յայտնի եղեն քեզ ։

## ԳԼ. Գ.

1 Եւ ես տրտմեցայ՝ և լացի. և յարեայ՝ և կայի յաղօթս զայրագին սրտիւ ։ 2 * Եւ ասեմ, արդար ես դու Տր՝ և ամ գործք քո. և ամ ճանապարհք քո ողորմութիւն ։ և զդատաստանս՝ և զճշմարիտն՝ և զարդարն դատես մինչև յաւիտեան ։ 3 * Նայեա՛ց առ իս. և յիշեա՛ զիս. և մի՛ հատուցաներ ինձ ըստ մեղս իմ. և ըստ չարիս իմ և հարց իմոց՝ որք մեղան առաջի քո ։ 4 * Զի անցին նոքա զպատուիրանօք քովք. ‖ և ետուր զմեզ՝ ՚ի յափշտակութիւն՝ և ՚ի գերութիւն՝ և ՚ի մահ՝ և յառակս նախատանաց ընդ ամ հեթանոսս՝ ուր և ցրուեալքս եմք ։ և արդ այժմ Տր բազում են իրաւունք ճշմարտութեան քոյ ։ 5 * Զոր արարեր ընդ իս և ընդ հարս իմ. զի ո՛չ արարաք զպատուիրանս քո. և ո՛չ ևս գնացաք ճշմարտութեամբ առաջի քո ։ 6 * Արդ արա՛ ընդ իս ըստ հաճութեան կամաց քոց. և տո՛ւր հրաման առնուլ զոգի իմ. զի եղէց արձակեալ ՚ի հողւոյս՝ եղէց հող. վասնզի լաւ է ինձ մեռանիլ՝ քան զայս կեանս իմ. զի նախատինս սուտս լուայ. և տրտմութիւն բազում է յիս. արձակեա՛ զիս ՚ի վշտաց իմոց ՚ի տեղին յաւիտենից. և մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն ։ 7 * Վասնզի և ՚ի նմին իսկ աւուր էր լուեալ նորա զբանս. որ էր անցեալ ընդ Սառրայ ընդ դուստր Ռագուելայ. որ էր յեկբատանս ՚ի մարաց գաւառին ։ 8 * Զի նախատէին զաղջիկն աղախնայք հօրն իւրոյ. որ էր տուեալ արանց եօթանց. և զամենեսեան դևն չար սպանանէր զնոսա, մինչչև մերձեցեալ էին ՚ի նա ըստ օրինի արանց և կանանց. և նախատէին զնա աղախնայքն, և ասէին. ո՛չ իմանաս՝ զի հեղձուցանես զարս քո. զի ահա զեօթն այր առեր. և ոչ ՚ի միում վայելեցեր ։ 9 * Արդ զմեզ զի՞ տանջես. ընդէ՞ր և ոչ դու ընդ նոսա կորեար. զի ոչ տեսանէաք մեք զզաւակ քո մինչև յաւիտեան ։ 10 * Զայս իբրև լուաւ աղջիկն՝ տրտմեցաւ յոյժ. և կամէր խեղդել զինքն ։ և ասէր՝ մի եմ ես՝ միամօր հօրն իմոյ. արդ եթէ առնեմ զայս՝ նախատինս առնեմ նմա. և իջուցանեմ ես զծերութիւն նր ցաւովք ՚ի դժոխս ։ 11 * Եւ կայր նա յաղօթս ընդ պատուհանն. որ էր ընդդէմ Երուսաղեմի ։ և ասէր ։ 13 * Օրհնեալ ես դու Տր Ած իմ. օրհնեալ է անունդ քո սուրբ և պատուական մինչև յաւիտեան ։ 14 * Եւ արդ Տր՝ բոլորով սրտիւ իմով աղաչեցի զքեզ ։ 15 * Եւ ասացի հրաժարիլ հողւոյս ՚ի մարմնոյս իմմէ. 16 զի մի՛ ևս լսիցեմ զնախատինսն ։ * Զի դու Տր գիտես. զի սուրբ եմ ես յամ 17 մեղաց կուսութեամբ իմով ։ * Եւ ո՛չ է իմ աղտեղեալ զանուն իմ. և զանուն հօր իմոյ. և միամօր եմ ես հօր իմոյ. և ոչ գոյ որդի, որ ժառանգէ զնա. և ո՛չ է իւր եղբայր մերձաւոր. և ոչ եղբօր որդի՝ զի պահեսցիս ես զանձն իմ նմա կնութեան. զի ահաւասիկ կորեան իմ եօթն այր. արդ զինչ օգուտ է ինձ ընաւ կեալ. արդ եթէ ոչ կամիս զմեռանիլս Տր. նայեա՛ց յիս՝ և ողորմեա՛ց ինձ. զի մի՛ ևս լուայց ես զնախատինս ։ 24 * Եւ լսելի եղեն աղօթք երկոցունցն 25 առաջի մեծին Ռափայելայ ։ * Եւ առաքեցաւ նա բժշկել զերկոսին. տօբիթայ կեղևել զլուսն յաչաց նր ։ և զսառայի զդստերն Ռագուելի հանել զազմոդ դևն. և տալ զնա կին տօբիայ որդւոյ տօբիթայ. վասնզի տօբիայ անկ իսկ էր ժառանգել զնա. և ՚ի նմին ժամանակի դարձաւ տօբիթ. և եմուտ ՚ի տունն իւր. և սառայ դուստրն Ռագուելայ էջ ՚ի վերնատանէ իւրմէ ։

(Margin: Օրէ. 28.15.)

## ԳԼ. Դ.

1 Եւ յաւուրն յայնմիկ յիշեաց զարծաթն. զոր եդ առ Գաբայելայ ՚ի Հռագէս քաղաքի՝ յերկրին մարաց ։ և ասէ նա ՚ի միտս իւր. ես խնդրեցի մահ անձինս իմոյ. ընդէր ոչ կոչեմ զտօբիա զորդին իմ. և ցուցանեմ 2 նմա զամ. մինչչև մեռեալ իցեմ ։ * Եւ կոչեաց զնա, և ասէ ցնա՝ ‖ որդեա՛կ 3 իմ ։ * Եթէ մեռանիցիմ, թաղեսջիր զիս՝ և մի՛ անարգեսցես՝ և կամ անտես առնիցես զմայրս քո. ‖ այլ պատուեսցես զնա զամ աւուրս կենաց քոց. և արասցես սմա զամ ինչ. որ հաճոյ է սմա. և 4 մի՛ տրտմեցուցանիցես զնա ։ * Եւ յիշեսցես դու. զի բազում ճգնութիւնս կրեաց վն քո. յորժամ էիր դու յորովայնին ։ 5 * Եւ յորժամ մեռանիցի թաղեսցես ընդ իս ՚ի նմին շիրմի ։ և յիշեա՛ 6 դու զՏր Ած քո ։ * Զամենայն աւուրս կենաց քոց. և մի՛ մեղանչիցես դու. և կամ յանցանիցես զպատուիրանօքն նր ։ այլ առնիցես զարդարութիւն յամ կեանս քո. և մի՛ գնասցես դու ՚ի ճանապարհս անիրաւութեան. զի յորժամ առնիցես դու զճշմարտութիւն, յաջողեսցին ամ գործք քո. և ամենեցուն 7 որոց գործեն զարդարութիւն ։ * ‖ Յընչից քոց առնիցես զողորմութիւն. և մի՛ ագահեսցէ ակն քո՝ յորժամ առնիցես դու զողորմութիւնս. և մի՛ դարձուցանիցես

(Margin: ‖ Սիրաք 7.29. ‖ Ելից 20.12. ‖ [illegible] 3.9. Սիրաք 4.1. և 14.13.)

Ղուկ. 14.13. — Սերաք. 35.12. — Սերաք. 29.15. — Ա. Թես. 4.3. — Օրինաց 3.5. — Ղևտ. 19.13. — 2. Օրէն. 24.14. — Մատթ. 7.12. — Ղուկ. 6.31. — Ղուկ. 14.13.

նիցես դու զերեսս քո յամենայն աղ-
քատէ. և 'ի քէն ոչ դարձուսցէ Ա՟Ծ
8 զերեսս իւր։ * Որչափ և իցէ քո. ըստ
նմին բազմութեան արասցես ողորմու-
9 թիւն։ * Եթէ սակաւ իցէ քո՝ ըստ
սակաւին. և մի՛ յապաղեսցես առնել
10 ողորմութիւն։ * Զի գանձս բարիս
գանձեսցես քեզ յաւուրն կենաց քոյ։
11 * Զի ողորմութիւնք փրկեն 'ի մահուա-
նէ. և ոչ տան մտանել 'ի խաւարն։
12 * Պարգևք բարիք են ողորմութիւնք
ամենեցուն. որք առնեն զնա առաջի
13 Ա՟Ծ։ * Զգոյշ լինիջիր դու ան-
ձին քում 'ի պոռնկութենէ. և առ-
նուցուս դու կին 'ի զաւակէ հարց քոց.
և մի՛ առնուցուս դու կին յազգէ օտա-
րէ. զի որդիք մարգարէից եմք. Նոյի՝
աբրահամու՝ իսահակայ՝ յակոբայ՝
հարցն մերոց առաջնոց։ յիշեա՛ դու
որդեակ. զի սոքա ամենեքեան առին
կանայս յեղբարց իւրեանց. և զաւակ
նոցա ժառանգեսցէ զերկիր։ և դու
որդեակ՝ սիրեսցես զեղբարս քո. և մի՛
դարձուցես զերեսս քո. և մի՛ դար-
ձուցանիցես դու զսիրտ քո յեղբարց
քոց. յորդւոց և 'ի դստերաց ժողովր-
դեան քոյ. առնուլ քեզ 'ի նոցանէ
14 կին։ * Վասն զի յամբարտաւանու-
թիւն է կործանումն՝ և խռովութիւն յոյժ. և
'ի պղծութենէ պակասութիւն, և կարօ-
տութիւն յոյժ. զի պղծութիւն է մայր
15 սովու։ * Եւ վարձք վարձկանի քոյ
առ քեզ մի՛ ագցին. այլ հատուսցես
դու առժամայն. և եթէ ծառայես-
ցես դու Ա՟Ծ, հատուսցէ քեզ 'ի բա-
րիս. զգոյշ լինիջիր դու որդեակ յամենայն
գործս քո. և լեր դու խրատեալ յամենայն
16 կեանս քո։ * Եւ զոր դու ատես,
և ումեք մի՛ առնիցես. զգինի արբեցու-
թեան մի՛ ըմպիցես. և մի՛ երթիցես դու
17 արբեալ 'ի ճանապարհ։ * 'Ի հացէ
քումմէ տացես քաղցելոց. 'ի հան-
դերձէ քումմէ մերկոց. և ամենեքեան
որք յաւելցին քեզ՝ առնիցես ողոր-
18 մութիւն։ * Սփռեսցես դու զհացն քո
'ի վերայ գերեզմանաց արդարոց. և
19 մի՛ տացես զայն մեղաւորաց։ * Խոր-
հուրդ յամենայն մարդոյ խնդրեսցես. և
մի՛ արհամարհեսցես զամենայն խորհուրդս
20 պիտանեաց։ * Եւ յամենայն ժամ
օրհնեսցես դու զՏէր Ա՟Ծ քո. և 'ի նմա-
նէն խնդրեսցես դու՝ որպէս ուղղեսցին
ճանապարհք քո. և ամենայն խորհուրդք և
գնացք քո յաջողեսցին. զի ամենայն խոր-
հուրդք մարդոյ ոչինչ են։ այլ Տէր ինքն
տայ զխորհուրդս բարեացն. և զորս
կամի խոնարհեցուցանէ. որպէս և հաճոյ
է նմա։ և արդ որդեակ՝ յիշեսցես դու

զամենայն զպատուիրանս իմ. զորս պատ-
ուիրեմ ես քեզ. և մի՛ ջնջեսցին նոքա 'ի
21 սրտէ քումմէ։ * Եւ արդ՝ ես ցուցա-
նեմ քեզ զտասն քանքար արծաթոյն.
զոր եդի ես 'ի պահ առ գաբայելայ
որդւոյ գաբրիեայ. 'ի հռագաւ յերկ-
23 րին մարաց։ * Եւ մի՛ երկնչիցես որ-
դեակ՝ զի աղքատացաք յոյժ. կան
քո բազում ինչք՝ և ստացուածք՝ ե-
թէ երկնչիցիս դու յԱ՟Ծ. և 'ի բաց
լինիցիս յամենայն մեղաց. և արասցես դու
զհաճոյսն առաջի նորա։

Սեր. 1.15. — Հռով. 8.17.

## ԳԼ: Ե։

1 Եւ պատասխանի ետ տօբիա՝ և
ասէ ցնա. հայր՝ արարից զամենայն
2 ինչ. զոր պատուիրեցեր ինձ։ * Բայց
ես զիա՞րդ կարացից գտանել զար-
3 ծաթն. զի ոչ գիտեմ զայրն։ * Եւ
ետ նմա զգիր առնն. առ որում կայր
4 գանձն յաւանդի։ * Եւ ասէ ցնա.
խնդրեա՛ դու քեզ զայր ոք. որ եկես-
ցէ ընդ քեզ. և ես տաց զվարձս նորա
մինչև կենդանիս եմ. և երթիցես՝ առ-
5 ցես զարծաթն։ * Եւ գնաց տօբիա
խնդրել ընդ իւր վարձուոր. և եգիտ
6 նա զռափայէլ հրեշտակ։ * Եւ նա ոչ
7 գիտէր՝ ով իցէ նա։ * Եւ ասէ ցնա
տօբիա. կարես գալ դու ընդ իս 'ի
հռագաւ յերկիրն մարաց։ և կամ ես
դու տեղեակ և խելամուտ տեղեացն։
8 * Ասէ ցնա հրեշտակն. եկից ես ընդ
քեզ և ճանապարհին տեղեակ եմ. և
ճանաչեմ ես զգաբայէլ զեղբայրն
9 մեր։ * Եւ ասէ ցնա տօբիա. մնա՛ դու
վայր մի աստէն՝ մինչև հարցից ես
զհայրն իմ։ և ասէ ցնա՝ երթ. և մի՛
10 յամիցես։ * Եւ եմուտ՝ և պատմեաց
հօրն. ահաւասիկ գտի ընկեր. որ գայ
ընդ իս. և ասէ ցնա հայրն իւր. կոչեա՛
դու զնա առ իս. զի գիտացից թէ յոր
մէ ազգէ է նա. և կամ թէ հաւատա-
11 րիմ է գալ ընդ քեզ։ * Եւ նա կո-
չեաց զնա 'ի ներքս. և ողջոյն ետուն
16 միմեանց։ * Եւ ասէ ցնա տօբիթ. եղ-
բայր, յորմէ ցեղից մերոց ես դու.
17 պատմեա՛ ինձ։ * Եւ ասէ ցնա. զազ-
գատոհմն իմ խնդրես՝ թէ վարձուոր,
որ երթայ ընդ որդւոյդ քում։ և ասէ
ցնա տօբիթ. կամիմ եղբայր գիտել
18 զազգն քո՝ և զանուն։ * Եւ ասէ. ա-
նուն իմ ազարիա՝ անանիայ որդի մե-
19 ծի եղբարց քոց։ * Եւ ասէ ցնա տօ-
բիթ. ողջ եկիր եղբայր. և մի՛ ցաս-
նուր ինձ. զի խնդրեցի զազգատոհմն
քո գիտել. զի դու եղբայր իմ իսկ ես՝
'ի բարի՝ և յազնուական յազգէ. զի
ճանաչէի ես զանանիա և զյօնաթան՝
և

և զորդիսն . և զանձս . և զմեծի . յոր
ժամ երթայաք մեք 'ի միասին երկիր
պագանել յերուսաղէմ, և մատուցա
նել զանդրանիկս՝ և զտասանորդս ար
դեանց . և ոչ մոլորեցան նոքա ըստ
մոլորութե եղբարցն մերոց . յարմա
տոյ, և յազգէ մեծայ ես եղբայր ։
20 * Այլ արդ՝ ասա դու ինձ . զինչ տաց
քեզ վարձս . դրամ մի յաւուր . և զու
ձիկն որպէս որդւոյ իմում ։ * Եւ 21
յաւելից ես 'ի վարձուն քո՝ եթէ ող
ջութբ դառնայցէք այսրէն ։ և հաճոյ
թուեցաւ նոցա առնել այսպէս ։
22 * Եւ ասէ ցնա տօբիա . պատրաստ
ես դու որդեակ 'ի ճանապարհն, և յա
ջողեսցի քեզ ։ և պատրաստեաց մա
նուկն զթոշակն ճանապարհին ։ և ասէ
ցնա հայրն իւր . գնա դու որդեակ ը̅
առնդ ընդ այդմիկ . այլ որ բնակեալն
է յերկինս Ա̅ծ . յաջողեսցէ զճանա
պարհն ձեր . և հրեշտակ նորա ուղեկից
լիցի ձեզ ։ * Եւ ելին՝ և գնացին եր 23
կոքեան 'ի միասին . և շուն պատանե
կին ընդ նոսա ։ և ասէ մայրն նորա լա
լով . տօբիթ՝ զի՞ արձակեցեր զոր
դեակն 'ի մենջ . ոչ դա է ցուպ ծերու
թե մերոյ մտանել և ելանել առաջի
մեր ։ * Արծաթ արծաթոյ մի՛ ժամա 24
նեսցէ . այլ եղիցի փոխանակ որդեկին
մերոյ ։ * Քանզի՝ որ պատրաստեալս 25
է մեզ յԱ̅յ՝ բաւական է մեզ ։ * Եւ 26
ասէ ցնա տօբիթ . մի՛ լիցի քեզ տրտ
մութի քոյր . զի ողջութբ եկեսցէ .
և աչք քո տեսցեն զնա ։ * Զի հրեշ 27
տակ նորա բարի առաջնորդ է նորա . և յա
ջողեսցէ զճանապարհն նորա . և դարձցի
այսրէն ողջութբ ։ * Եւ ապա դադա 28
րեաց մայրն 'ի լալոյ անտի ։

## Գլ. Զ.

Եւ նքա գնացին 'ի ճանապարհն . և 1
եկին 'ի գետն դկղաթ . և համ
դեան անդ առ ափամբն ։ * Եւ պատա 2
նեակն էջ լուանալ յեզր գետոյն . և վա
զեաց ձուկն մի 'ի գետոյ անտի . և կա
մէր կլանել զպատանեակն ։ * Եւ հրեշ 4
տակն ասէ ցպատանեակն . բուռն հար
և կալ զձուկնդ . և կալաւ պատանեակն
զձուկն . և եհան զնա 'ի ցամաք ։ * Եւ 5
ասէ ցնա հրեշտակն . բաց դու զփոր
ձկանդ . և հան զսիրտ՝ և զլեարդդ . և
զլեղիդ . և դիր 'ի զգուշութե ։ * Եւ ա 6
րար պատանեակն . որպէս և ասաց ցնա
հրեշտակն . և զձուկնն խորովեցին՝ և
կերին . և ապա գնացին երկոքեան 'ի
միասին մինչև մօտ եղեն յեկբատանս ։
* Եւ ասէ պատանեակն ցհրեշտակն . 7
ազարիա եղբայր . վասն ո՞յր բարձաք

զսիրտս՝ և զլեարդս՝ և զլեղի ձկանս ։
8 * Եւ ասէ ցնա՝ սիրտդ՝ և լեարդդ .
եթէ զոք ունի դև՝ կամ այսն պիղծ .
զայս արժան է ծխել առաջի առն, կամ
կնոջ . և այլ ոչևս դիմահարեսցի .
9 * Եւ լեղիս՝ եթէ ոք ունի զլուսն յաչս
10 իւր՝ օծանի սովաւ՝ և բժշկի ։ * Եւ
իբրև մերձեցան նոքա 'ի հռագուէլ ։
11 * Ասէ հրեշտակն ցպատանեակն . եղ
բայր՝ այսօր ունիմք մեք հանգչել առ
հռագուէլայ . և նա ինքն ազգական է
քո . և է նորա դուստր . և անուն է
նորա սառա . արդ խօսեցայց ես վասն
12 նորա . զի տացեն զնա քեզ 'ի կին . * ‖ Զի
քեզ անկ է ժառանգութի աղջկանն .
և դու միայն ես յազգէ նորա ։ և աղջիկն
արդարև բարուոք է . զգաստ է՝ և իմաս
13 տուն . և արդ լո՛ւր դու ինձ ։ * Եւ
խօսեցայց ընդ հօր աղջկանն . և յոր
ժամ դարձցուք մեք այսրէն 'ի հռա
գուէայւոց անտի, արասցուք քեզ զհար
սանիսն . քանզի գիտեմ ես զհռա
գուէլ . զի ոչ տացէ զնա առն օտարի
ը̅ս օրինացն մովսէսի . որ ոչ է մերձաւոր
արեանն . և վասն զի զժառանգու
թին քեզ արժան է առնուլ քան ամ̅
14 մարդոյ ։ * Յայնժամ ասէ պատա
նեակն ցհրեշտակն . եղբայր ազարիա՝
իմ այսպէս լուեալ է վասն աղջկանն .
տուեալ է զնա եօթն առնն . և ամենե
քեան նոքա մեռեալ են յառագաստի
15 անդ ։ * Եւ ես մի եմ միամօր հօրն ի
մոյ . երկնչիմ, գուցէ մտանիցեմ, և մե
ռանիցիմ, ոպ̅ և առաջինքն . զի ունի
զաղջիկն դև . և սիրէ զնա . որում ո՛չ
մերձենայ մեղանչել ումեք , բայց մի
այն որոց մերձենան առնուլ զնա կնու
թե . արդ եթէ առնեմ զայս . երկնչիմ,
գուցէ կորուսանիցեմ ես զհայրն իմ և
զմայրն իմ ցաւօք 'ի վշ̅տ իմ 'ի գերեզ
մանն իւրեանց . և որդի այլ ո՛չ գոյ . որ
16 թաղէ զնոսա ։ * Եւ ասէ ցնա հրեշ
տակն . ո՛չ յիշես դու զբանս պատուի
րանաց հօրն քոյ . առնուլ քեզ կին
յազգէ քումմէ . և արդ լո՛ւր դու ինձ՝
17 զի քեզ եղիցի նա 'ի կնութե ։ * Եւ
վասն դիւին մի՛ ինչ հոգար . զի 'ի գի
շերիս յայսմիկ տացես դու զնա քեզ
18 կնութե ։ * Եւ յորժամ մտանիցես
յառագաստ անդր , առցես դու ա
ճիւնախառն կրակ . յորում խունկք
ծխեալ են . և դիցես դու 'ի վերայ նորա
'ի սրտէ անտի՝ և 'ի լերդէ ձկանն . և
19 ծխեսցես ։ * Եւ հոտոտեսցէ դևն .
և փախիցէ . և ո՛չևս դարձցի անդրէն
20 մինչև յաւիտենից ։ * Եւ յորժամ
մտանիցէք դու և աղջիկն 'ի սենեակ
անդր . յարիջիք դուք երկոքին՝ և գո

‖ Թուոց 27.8. և 36.8.

չեսջիք առ ողորմածն Ա.Ծ լալով մե-
ծաւ. և կեցուսցէ զձեզ. և ողորմեսցի
ձեզ: * Ո՛վ քեզ էր պատրաստեալ 'ի 21
սկզբանէ իւրմէ. և դու ապրեցուսցես
զնա. և նա ընդ քեզ եկեսցէ 'ի տուն
քո. և կարծեմ թէ որդիք լինին քո
'ի նմանէն: * Եւ՛ իբրև լուաւ զայս 22
տոբիա. անկաւ նմա գութ ընդ աղջ-
կանն. և ոգին նր կցեցաւ 'ի սէր նր:

## ԳԼ: Ա:

Եւ՛ եկին նք յեկբատանս. և մտին 1
նոքա 'ի տուն հռագուէլայ. և ել
ընդառաջ նոցա սառա. և ողջոյն ետ
նոցա. և նոքա նմա: և տարաւ զնոսա
'ի տուն: * Եւ՛ ասէ ցհեդնայ ցկին 2 (ցաննա)
իւր. տեսանես. զի նման է պատա-
նեակս տոբիթայ եղբօր որդւոյ իմոյ:
* Եւ հարց զնոսա հռագուէլ՝ և ասէ. 3
ուստի էք եղբարք: և ասեն ցնա. յոր-
դւոցն նեփթաղիմայ եմք. որք գե-
րեալք են 'ի նինուէ: * Եւ՛ ասէ ցնս 4
ճանաչէ՞ք դուք զտոբիթ զեղբայրն
մեր. և ասեն՝ ճանաչեմք: և ասէ ցնս.
ո՞ղջ է: * Եւ՛ նոքա ասեն. ո՞ղջ է. և կեն 5
դանի է: և ասէ տոբիա, հայր իմ
է: * Եւ՛ յարուցեալ վաղվաղակի հռա 6
գուէլ համբուրեաց զնա. և ելացյոյժ.
* Եւ՛ օրհնեաց զնա՝ և ասէ. բարւոյ 7
և բարերարի առն որդի: և իբրև լուա
աւ թէ տոբիթայ կացին աչքն, ելաց:
* Եւ՛ տրտմեցաւ ինքն՝ և հեդնա կին 8 (աննա)
նորա. և սառա դուստր նոցա. և ըն
կալան՝ և հանդուցին զնոսա մեծաւ
խնդութբ: * Եւ՛ զենին նոքա խոյ մի 'ի 9
խաշանց. և յօրինեցին՝ և եդին առաջի
նոցա խորտիկս բազում. և ասէ տո
բիա ցռափայէլ. եղբայր ազարիա՝
արդ խօսեա՛ց դու՝ վասն որոյ խօսէիրն
'ի ճանապարհի անդ. զի եղիցի այն-
պէս. և դարձոյց զբանսն անդրէն առ
հռագուէլ: և ասէ հռագուէլ ցտո-
բիայ. կեր՝ արբ՝ և ուրախ լեր: զի քեզ
անկ է առնուլ զմանուկն իմ. բայց
ասեմ քեզ զճշմարիտն: ետու ես զմա
նուկդ իմ եօթն առն. և յորժամ կա-
մէին մտանել առ դա, մեռանէին 'ի
նմին գիշերի. այլ դու այժմ որդեակ
իմ ուրա՛խ լեր: * Եւ՛ ասէ տոբիա. ոչ ինչ 10
ճաշակեմ աստ. մինչև հաստատէք
առ իս զիրդ: * Եւ՛ ասէ հռագուէլ. 13
|| առ զնա քեզ ըստ օրինաց. զի դու եղ
բայր ես աղջկանն. և քեզ լիցի:
* Եւ ողորմածն Ա.Ծ յաջողեսցէ ձեզ 14
'ի բարիս: * Եւ՛ կոչեաց զսառայ ըդ- 15
դուստրն իւր. և կալաւ նա զձեռանէ
նորա. և ետ զնա տոբիայ կնութն.
և ասէ. աճացուսիկ ըստ օրինացն մո

|| Թւոց 36.6.

ոսկի ա՛ռ դու զնա. և տո՛ւր դու զնա
16 առ հայր քո: և օրհնեաց զնոսա: * Եւ՛
կոչեաց նա զհեդնայ զկին իւր. և ա-
ռեալ նա տայր աղջկանն զամենայն
ինչս տանն. և հաստատէր մուրհակօք՝
17 և կնքէր: * Եւ՛ ապա սկսան ուտել
18 և ըմպել՝ և ուրախ լինել: * Եւ՛ կո-
չեաց հռագուէլ զհեդնայ զկին իւր՝
և ասէ ցնա. քո՛յր՝ պատրաստեա՛ դու
զմիւս սենեակն՝ և տա՛ր անդր զաղ-
19 ջիկն: * Եւ՛ արար՝ որպէս և հրամայ
եաց նմա. և տարաւ զնա անդր՝ և
ելաց. և ջնջէր՝ և մաքրէր մայրն զար-
20 տասուս աղջկանն: * Եւ՛ ասէր ցնա.
քաջալերեա՛ց դուստր: Տր երկնից և
երկրի տացէ քեզ զուրախութի և զցն
ծութի փոխանակ տրտմութեա այ-
սորիկ. քաջալերեա՛ց դուստր. քաջա
լերեա՛ց:

## ԳԼ: Բ:

1 Եւ՛ իբրև կատարեցին նոքա ուտել
զընթրիսն. տարան զտոբիայ առ
2 աղջիկն: * Եւ՛ իբրև եմուտ. յիշեաց
նա զբանսն ռափայէլի. և էառ նա
զամբիւնախառն զկրակ խնկոցն: և եդ
'ի վերայ նր զսիրտ ձկանն և զլեարդն՝
և ծխեաց: և իբրև հոտոտեցաւ դևն
զհոտն զայն. փախեաւ 'ի վերին կողմն
3 սահմանացն եգիպտոսի: * Եւ կապեաց
զնա հրեշտակն: և իբրև մտին յանկո
4 ղին երկոքին: * Յարեաւ տոբիա 'ի գա
հոյից անտի՝ և ասէ. արի՛ և դու քոյր՝
և կացցուք յաղօթս՝ և ողորմեսցի մեզ
Ա.Ծ: և սկսաւ տոբիա կալ յաղօթս:
7 * Եւ՛ ասէ. օրհնեալ ես դու Տր Ա.Ծ
հարցն մերոց. և օրհնեալ է անուն քո՛՝
և փառաւորեալ մինչև յաւիտեանս.
օրհնեսցեն զքեզ երկինք և ամենայն
8 ստացուածք քո: * || Դու արարեր
զադամ, և ետուր նմա օգնական զեւայ.
հաստատութի նմա զկինն նորա. և 'ի
նոցանէն եղև ամենայն զաւակ մարդ-
կան. դու ասացեր՝ եթէ ոչ է բարւոք
լինել մարդոյ միայն. արասցուք նմա
9 օգնական նման նմա: * Եւ՛ արդ Տր
ոչ եթէ վասն պոռնկութե ինչ առ-
նում ես ինձ զքոյրս զայս. այլ ճշմար-
10 տութբ: նայեա՛ց Տր: * Եւ՛ ողորմեա՛ց
ինձ. զի 'ի միասին ծերասցուք: և ասէ
աղջիկն ընդ նմա: և նևջեցին երկո-
քին 'ի միասին 'ի գիշերին յայնմիկ:
11 * Եւ՛ չոգաւ հռագուէլ. և փորեաց նմա
12 գերեզման: * Վասնզի երկնչէր. եթէ
13 դուցէ և նա մեռանիցի: * Եւ՛ եկն
14 հռագուէլ 'ի տուն իւր: * Եւ՛ ասէ
ցհեդնայ ցկին իւր. յղեա՛ դու զմի ոք
յաղախնաց այդի. և տեսցէ՝ եթէ կեն
դանի

|| [illegible] 2. 7.

դանի է՝ ապաքէն ոչ, թաղեսցուք զնա՝
և մի ոք գիտասցէ ։ *Եւ եմուտ աղա_ 15
խինն. և ետես զերկոսեանն՝ զի ննջէին ։
*Եւ ել նա՝ և պատմեաց նոցա եթէ կեն 16
դանի են ։ *Եւ օրհնեաց Ռագուէլ 17
զԱծ և ասէ ։ օրհնեալ ես դու Տէր
Ած յամ օրհնութիւս և 'ի փառս քո ։
և օրհնեսցեն զքեզ սուրբք քո ։ և ամ
ստեղծուածք քո ։ և ընտրեալք քո օրհ
նեսցեն զքեզ մինչև յաւիտեան ։
*Օրհնեալ ես դու Տր Ած ։ զի ու_ 18
րախ արարեր զիս ։ և ոչ եղանց ընդ իս ։
որպէս և կարծէի ։ այլ ըստ բազում
ողորմութեան քոյ արարեր դու ընդ
մեզ ։ *Օրհնեալ ես դու Տր ։ զի ողոր 19
մեցար երկոցունց միամօրիցս ։ արա
դու Տր ընդ սոսա զողորմութիւն քո ։
կատարեա դու զկեանս սոցա ողջու_
թբ և ուրախութբ ։ *Եւ հրամայ_ 20
եաց նա ծառայից իւրոց լնուլ զգե_
րեզմանն ։ *Եւ արար նոցա հարսա_ 22
նիս աւուրս չորեքտասան ։ *Եւ ասէ 23
ցնա Ռագուէլ ։ երդմնեցուցանեմ
զքեզ ։ զի մի գնասցես դու աստի ։ մին
չև կատարեսցին աւուրք չորեքտա_
սան հարսանեացս ։ *Եւ ապա առցես 24
դու զկէս ընչից իմոց ։ և երթիցես դու՝
և աղջիկդ՝ խաղաղութբ առ հայրն
քո ։ և զայլն ամենայն առնուցուք՝ յոր
ժամ մեռանիցիմք ես և կինս իմ ։

## Գլ ։ Թ ։

Եւ կոչեաց տոբի զռափայէլ՝ և ա_ 1
սէ ցնա ։ եղբայր ազարիա ։ *Առ_ 3
դու քեզ պատանի մի ։ և երկուս ուղտս ։
և գնա՛ 'ի հռագէս մարաց՝ առ գա_
բայէլ ։ և բեր դու ինձ զարծաթն ան
տի ։ և զնա առեալ ընդ քեզ ածցես
'ի հարսանիսս ։ *Զի երդուեալ հռա 4
գուէլ եթէ ոչ արձակեմ զքեզ ։
*Բայց հայրն իմ համարէ զաւուրս ։ 5
և եթէ յամեմք, մեծաւ վշտօք 'ի տրտ
մութե լինի ։ *Եւ գնաց ռափայէլ՝ 6
և հանգեաւ առ գաբայէլեայ ։ և ետ
նմա զգիր մուրհակին ։ և եբեր նա ըզ
պարկսն կնքօքն հանդերձ ։ և ետ ցնա ։
*Եւ կանխեալ ընդ առաւօտն՝ գնա 12
ցին նոքա 'ի հարսանիսն անդր ։ և հա_
ճեցաւ տոբիա ընդ կինն իւր ։

## Գլ ։ Ժ ։

Եւ տոբիթ հայրն նր զամաւուրս 1
խորհէր 'ի սրտի իւրում , յոր_
ժամ կատարեցան աւուրք ժամանա_
կելոյն՝ և ոչ եկին ։ *Եւ ասէ ։ արդեօք 2
մեռաւ գաբայէլ ։ և ոչոք ետ նմա զար
ծաթն ։ և նա ոչ կամի գալ յամօթոյ ։
և տրտմեալ եղև նա յոյժ ։ *Եւ ասէ 3
‖ ցնա կինն իւր ։ կորեաւ մանուկն՝ զի ‖ Մր. 5.23.
4 յամեաց այսչափ ։ *Եւ սկսաւ նա լալ՝
5 և ողբալ զնա ։ *Եւ ասէ ։ ոչ է ինձ
պէտս որդեակ իմ և ոչ ինչ ։ այլ ընդէր
ընաւ թողի զքեզ լոյս աչաց իմոց ։
6 *Եւ ասէ ցնա տոբիթ ։ լուռ լեր ։ և
7 մի հոգար ։ ողջ է ։ *Եւ նա ասէ ցնա ։
դու լուռ լեր ։ և մի խաբեր զիս ։ զի
մանկիկն իմ կորեաւ ։ և ելանէր զօր
հանապազ՝ և դայր 'ի ճանապարհն՝ ը
որ գնացին ։ 'ի տուէ հաց ոչ ուտէր ։
և 'ի գիշերի ոչ դադարէր 'ի սգալոյ
զտոբիայ զորդին իւր ։ մինչև կատա_
րեցան աւուրք չորեքտասանք հարսա
նեացն ։ զոր երդուեալ հռագուէլ լի_
8 նիլ նոցա անդ ։ *Եւ ասէ տոբիա
ցհռագուէլ ։ արձակեա՛ զիս ։ զի հայր
իմ և մայր իմ ոչ ևս ակն ունին տեսա
9 նել զիս 'ի հօգւոց ։ *Եւ ասէ ցնա ա_
ներն իւր ։ կա՛ց մնա՛ դու առ իս ։ և ես
յղեցից մանկունս առ հայրն քո ։ և
10 պատմեսցեն նմա վասն քո ։ *Եւ ասէ
տոբիա ։ ո՛չ է այդպէս ։ այլ արձակես
ցես զիս առ հայրն իմ ։ և յարեաւ հռա
գուէլ՝ և ետ նմա զսառայ զկին նր՝ և
զկէս ընչից իւրոց ։ և զծառայ և զա_
ղախին ։ և զանասուն և զարծաթ ։
11 *Եւ օրհնեաց զնոսա ։ և արձակեաց՝
և ասէ ։ յաջողեսցէ ձեզ որդեակ իմ
Տր Ած երկնից ։ մինչև մեռեալ իցեմ
12 ես ։ *Եւ ասէ ցդուստրն իւր ։ պատ
ուեա՛ դու որդեակ իմ զսկեսուրն քո ։
և զսկեսրայրն ։ քանզի նոքա են քո
հայր և մայր ։ և 'ի բաց լեր դու 'ի բա
նից ստելութեց ։ և համբուրեաց զնա ։
13 *Եւ հեդնա ասէ ցտոբիայ ։ եղբայր
սիրելի, ողջութբ տարցէ զքեզ Տէր 'ի
տուն քո ։ և տացէ տեսանել ինձ ըզ
զաւակ 'ի սառայէ դստերէս իմմէ ։ զի
բերկրեցայց ես առաջի Տն ։ և արդ
յանձն առնեմ զսա քեզ ։ և յանձն լի_
ցի ։ մի տրտմեցուցանիցես զսա ։

## Գլ ։ ԺԱ ։

1 Յետ այսորիկ՝ և տոբիա երթայր,
և օրհնէր զԱծ ։ զի յաջողեաց
նմա զճանապարհս նր ։ օրհնէր հռա_
գուէլ զկինն իւր ։ և նա երթայր ընդ
նոսա մինչև մերձեցան նոքա 'ի նին_
2 ուէ ։ *Եւ ասէ ռափայէլ ցտոբիայ ։
արդ ո՞չ գիտես դու եղբայր ։ որպէս
3 թողեր դու զհայրն քո ։ *Ե՛կ յառաջ
անցցուք մեք քան զկինդ քո ։ և պատ
4 րաստեսցուք մեք զտունն ։ *Եւ առ
դու 'ի ձեռն քո զլեղի ձկանն ։ և գնա
ցին նոքա ։ և եկն շունն զկնի նոցա ։
5 *Եւ աննա նստէր ։ և սպասէր ըստ
սովորութեն ճանապարհի որդւոյն
իւրոյ ։

իւրոյ: *Եւ ետես նա զնա՝ զի գայր. և 6
ասէ ահաւասիկ որդին քո գայ. և այրն՝
որ ընկերն՝ չոգաւ ընդ նմա: *Եւ ասէ 7
Ռափայէլ. գիտեմ ես. զի բանին աչք
հօրն քո: *Արդ օծ շուրջ զաչօքն 8
զլեղին. և նա կսկծեցուսցէ. և հանցէ
զլուսն յաչաց նորա. և տեսանիցէ:
*Եւ ընթացաւ ընդառաջ աննա. և 9
անկաւ 'ի վերայ պարանոցի որդւոյն
իւրոյ՝ և ասէ ցնա. տեսի ես զքեզ որ
դեակ իմ. արդ այսուհետև անհոգ
մեռանիմ. և լացին երկոքին: *Եւ 10
տոբիթ ելանէր արտաքոյ առ դրուն
սրն. խարխափէր՝ գլորիւր. որդին
ընթացաւ առ նա. և յարուցանէր. և
կանգնէր զհայրն իւր: *Եւ ցանէր 13
նա զլեղին յաչս հօրն իւրոյ. և ասէր.
ժուժեա՛ հայրիկ. և համբերեա՛:
*Եւ իբրև եկաց վայր մի. վաղվաղա 14
կի կեղևեցան՝ և անկան լուսունքն
յաչաց նորա: *Եւ ետես նա զորդին 15
իւր. և անկաւ նա զպարանոցաւ նր:
*Եւ լայր. և ասէր. օրհնեալ ես Տր 16
Ած. և օրհնեալ է անուն քո յաւի-
տեանս. և օրհնեալք են ամ սուրբք
քո հրեշտակք: *Զի խրատեցեր՝ և 17
ողորմեցար ինձ. զի տեսանեմ զտո-
բիայ զորդի իմ. և եմուտ որդի նր 'ի
ներքս խնդութբ. և պատմեաց նա
հօրն իւրում զմեծամեծսն. որք եղեն
նմա 'ի մարս: *Եւ ել տոբիթ ընդ- 18
առաջ նուոյն իւրոյ խնդութբ. և օրհ
նէր զԱծ առ դրունս նինուէի: և զար
մանային՝ որք տեսանէին զնա. զի յըն
թանալն իւրում տեսանէր: *Եւ տո 19
բիթ գոհանայր առաջի նոցա. եթէ
որպէս ողորմեցաւ նմա Ած. և իբրև
մօտ եղև տոբիթ առ հարսնն իւր.
օրհնեաց զնա՝ և ասէ. եկիր ողջութբ
դուստր. օրհնեալ է Ած՝ որ էած
զքեզ առ մեզ. և հայր քո և մայր քո.
և եղև ուրախութի ամենեցուն եղ
բարցն նորա. որք էին 'ի նինուէի:
*Եւ եկին աքիաքարոս. և նասբաս 20
եղբօրորդիք նր: *Եւ արարին նմա 21
անդ հարսանիս աւուրս եօթն:

## ԳԼ: ԺԲ.

Ե՛ւ կոչեաց տոբիթ զտոբիայ զոր 1
դին իւր՝ և ասէ ցնա. տես արդ
ո՛րդեակ զվարձս առնդ. որ եկն ընդ
քեզ. և յաւելուլ յայն արժան է:
*Եւ ասէ ցնա. հա՛յր՝ ոչինչ պակա- 2
սի ինձ՝ եթէ տամ դմա զկէս ընչից
իմոց՝ զոր բերի: *Զի զիս էած առ 3
քեզ ողջ. և զկինն իմ ողջացոյց. և
զարծաթն իմ եբեր. և զքեզ նոյնպէս
ողջացոյց: *Եւ ասէ ծերն. յիրաւի է 4

5 տալ դմա: *Եւ կոչեաց նա զհրեշ
տակն՝ և ասէ ցնա. ա՛ռ դու զկէս այնր
6 ամի. զոր բերերն: *Եւ կոչեաց յայն
ժամ զերկոսին զնոսա՝ և ասէ ցնոսա.
օրհնեցէք դուք զԱծ. և խոստովան
եղերուք դուք նմա. և տուք նմա ըզ
փառս. և խոստովա՛ն եղերուք առաջի
ամ կենդանեաց վս այդր. զոր արար
ընդ ձեզ. զի բարի է օրհնել զԱծ. և
բարձրացուցանել զանուն նր. և զպատ
գամս գործոց Այ պատուո՛վ մեծա
ցուցանել. և մի՛ յապաղէք խոստովան
7 լինել նմա: *Զխորհուրդ թագաւո
րի բարւոք է ծածկել. այլ զգործս
Այ յայտնել փառօք. զբարիս գոր-
ծեսջիք. և չար ձեզ ոչ պատահեսցի:
8 *Բարիք են աղօթք պահօք՝ և ողոր-
մութբք՝ և արդարութբք. բարի է
սակաւիկ մի արդարութբ, քան զբա-
զում ինչս անիրաւութբ. բարի է առ
նել զողորմութիւս, քան դնել զգանձս
9 ոսկւոյ: *Զի ողորմութի 'ի մահուէ-
անէ փրկէ. և նա ինքն սրբէ յամ
մեղաց. որք առնեն զողորմութիւս, և
10 զարդարութիւս՝ լցցին կենօք: *Եւ
ոյք մեղանչեն, պատերազմօղք են
11 իւրեանց կենացն: *Արդ ո՛չ ծածկե
ցից ես 'ի ձէնջ բան մի. զի ասացի
իսկ եթէ զխորհուրդս արքայի ծած
կել բարւոք է. այլ զգործս Այ յայտ-
12 նել փառօք: *Յորժամ կայցեր դու
յաղօթս՝ և նուն քո սառա՝ ես մատու
ցի զյիշատակ աղօթիցն ձերոց առա
ջի սրբոյն. և յորժամ թաղէիր դու
13 զմեռեալսն. ես ընդ քեզ էի: *Եւ յոր
ժամ ոչն դանդաղեցար 'ի յառնել՝ և
թողուլ զճաշն քո. զի երթիցես. և
ամփոփիցես դու զմեռեալսն. ոչ մոռա
ցայ զքեզ, յորժամ զբարիսն գործէիր.
14 այլ ընդ քեզ էի: *Եւ առաքեաց զիս
Ած բժշկել զքեզ՝ և զնու քո զսա-
15 ռայ: *Ես եմ ռափայէլ յեօթանց
անտի 'ի սրբոցն հրեշտակաց՝ որք հա
նեն՝ և մատուցանեն զաղօթս սր-
բոյն. և մտանեն առաջի փառաց սր
16 բոյն: *Եւ խռովեցան երկոքեան՝ և
անկան 'ի վերայ երեսաց իւրեանց. զի
17 զահի հարան յոյժ: *Եւ ասէ ցնոսա՝
մի երկնչիք. խաղաղութիւն լիցի ձեզ.
18 և զԱծ օրհնեցէք: *Զի ո՛չ եթէ ի-
մով ինչ շնորհօք եկի ես. այլ կամօք
Այ ձերոյ եկի. օրհնեցէք զնա յաւի-
19 տեանս: * ‖ Ամ աւուրսն զի զամ զաւուրսն
զոր յայտնէի ես ձեզ. ոչ կերի՝ և ո՛չ
արբի. այլ իբրև տեսիլ տեսանէիք:
20 *Եւ արդ այժմ խոստովան եղերուք
Այ ձերում. զի ելանեմ ես առ այն՝
որ առաքեացն զիս. և գրեցէք դուք
զայս

‖ Ծննդ. 18.7. և 19.3.

զայս ամենայն: *Որ եղեւ՝ եւ կատարեցաւ: եւ գրեցաւ 'ի գիրս: եւ այլ ոչ եւս տեսին զնա: 21 *Գոհանային զգործոյն զմեծամեծայն Այ. եւ որպէս երեւեցաւ նոցա հրեշտակն Տն: 22

## ԳԼ. ԺԳ.

1 Եւ տօբիթ գրեաց աղօթս 'ի ցնծութիւն՝ եւ ասէ. օրհնեալ է Ած. որ կենդանի է յաւիտեանս՝ եւ արքայութիւն նր յամ յաւիտեանս: 2 *Զի նա հարկանէ՝ եւ ողորմի. իջուցանէ 'ի դժոխս՝ եւ հանէ. եւ ոչ ոք է՝ որ փախիցէ 'ի ձեռաց նր: 3 *Խոստովան եղերուք նմա որդիք իէլի առաջի ազգաց: 4 *Զի նա ցրուեաց զմեզ 'ի նոսա. յայտնեցէք զմեծութիւն նորա. բարձրացուցէք զնա առաջի ամենայն կենդանեաց. զի նա իսկ է Տր Ած մեր. Ած հայր մեր՝ մինչեւ յամենայն յաւիտեանս: 5 *Եւ տանջեսցէ զմեզ յամենայն անիրաւութիւնս մեր. եւ դարձեալ ողորմեսցի մեզ. եւ ժողովեսցէ զմեզ յամենայն ազգաց՝ յորս եւ ցրուեցաք 'ի նոսա: 8 *Եթէ դարձջիք դուք 'ի նա բոլորով սրտիւ ձերով՝ եւ յամենայն անձնէ. եւ արասջիք դուք առաջի նր զճշմարտութիւն. յայնժամ դարձցի նա առ ձեզ. եւ մի ծածկեսցէ նա զերեսս իւր 'ի ձէնջ: 6 *Եւ տեսանիցէք դուք՝ զոր առնիցէ ընդ ձեզ. եւ խոստովան եղիջիք դուք նմա ամենայն բերանով ձերով. եւ օրհնեցէք զՏր՝ որ արդարն է. եւ բարձր արասջիք զԹագաւորն յաւիտենից: 7 *Եւ ես յերկրի գերութեան իմում գոհացայց զնմանէ. եւ ցուցից զզօրութիւն եւ զմեծութիւն նր ազգաց մեղաւորաց. եւ արդ դարձարուք մեղաւորք. եւ արարէք զարդարութիւն առաջի նորա: զի ով գիտէ. հաճեսցի՝ եւ ողորմեսցի ձեզ: 9 *Այլ ես զԱծ իմ օրհնեցից՝ եւ անձն իմ զԹագաւորն երկնից. եւ ցնծասցէ եւ 'ի մեծութեան նորա: 10 *Ասասցեն զայս ամենայն ազգք. եւ խոստովան եղիցին նմա: 11 *Երուսաղէմ 'ի քաղաքն սուրբ. եւ խրատեսցէ նա զորդիս ժողովրդեան քոյ՝ եւ դարձցի, եւ ողորմեսցի որդւոյն արդարոց: 12 *Գոհասցիս դու զՏէ բարերարէ. եւ օրհնեսցես դու զԹագաւորն յաւիտենից. զի դարձեալ զխորանն իւր շինեսցէ 'ի քեզ ուրախութեամբ: 13 *Եւ բերկրեսցին 'ի քեզ, որք գերեալքն են. եւ սիրեսցեն զքեզ՝ որք չուառացեալքն են յամենայն ազգս յաւիտենից: 14 *Ազգք բազումք 'ի հեռաստանէ եկեսցեն. յանուն Տն Այ. եւ բարձեալ բերիցեն զպատարագս իւրեանց 'ի ձեռս իւրեանց՝ մատուցանել զայն Թագաւորին երկնաւորի. եւ տացեն քեզ զուրախութիւն յազգէ մինչեւ յազգ: 15 *Անուանք զանուն մեծ կոչեսցեն 'ի քեզ: 16 *Եւ անիծեալ լիցին ամենայն ատելիք քո. եւ եկեսցեն օրհնութիւնք 'ի վերայ սիրելեաց քոց: 17 *Ցնծա եւ ուրախ լեր դու 'ի վերայ որդւոյն արդարոց. եւ ժողովեսցին նոքա 'ի միասին. եւ օրհնեսցեն զՏր արդարութեան 'ի միասին: 18 *Երանեալք իցեն որք սիրեսցեն զքեզ. եւ ցնծասցեն նոքա 'ի խաղաղութեան քում. եւ երանի իցէ այնոցիկ. որք տրտմեցանն 'ի վերայ բեկման քոյ. զի անդրէն 'ի քեզ բերկրեսցին, 'ի տեսանել նր զփառսն քո. եւ ուրախ լիցին մինչեւ յաւիտեանս: 19 *Անձն իմ օրհնեսցէ զԱծ զԹագաւորն մեծ: 20 *Երանելի եղէց թէ եղիցին մնացորդք զաւակի իմոյ առ 'ի տեսանել զԵէմ պայծառացեալ: 21 *Զի շինեսցի Եէմ 'ի քարանց պատուականաց. 'ի շափիւղայէ եւ 'ի սուտակէ. եւ այլ եւս պատուական քարամբք. պարիսպք քո՝ եւ աշտարակք՝ եւ մարտկոցք քո յոսկւոյ սրբոյ: 22 *Եւ ամ հրապարակք Եէմի բիւրեղ եւ դաշնակ. եւ սարդիոնիւ ակամբք կազմեսցին: 23 *Եւ ասասցեն յամ փողոցս Եէմի ալէլուիայ: եւ օրհնեսցեն՝ եւ ասասցեն. օրհնեալ է Ած. որ բարձրացոյց զամենայն աշխարհս յաւիտեանս:

## ԳԼ. ԺԴ.

1 Եւ իբրեւ դադարեաց տօբիթ յօրհնութենէս յայսմանէ: 2 *Եւ էր իբրեւ ամաց յիսնեւութից՝ յորժամ կային աչքն նորա. եւ յետ ամաց ութից բացան աչքն նորա միւս անգամ: 3 *Եւ առնէր նա ողորմութիւն. եւ յաւել եւս երկնչել 'ի Տէ Այ՝ եւ խոստովան լինել նմա: 4 *Եւ ծերացաւ նա յոյժ: 5 *Կոչեաց նա զորդին իւր՝ եւ զորդի որդւոյն իւրոյ. եւ ասէ ցնա. որդեակ՝ առ դու զորդիս քո. զի ահաւասիկ ես ծերացեալ եմ. եւ մերձ եմ 'ի մեռանիլ: արդ երթ դու յերկիրն մարաց որդեակ իմ: 6 *Զի հաւատամ ես. որ եւ խօսեցաւ յովնան մարգարէ վն նինուէի. եթէ կործանեսցի. եւ յերկիրն մարաց եղիցի խաղաղութիւն մինչեւ 'ի ժամանակ մի. զի եղբարք մեր ցրուեսցին 'ի բարի երկրէն. եւ Եէմ եղիցի աւերակ եւ անապատ. եւ տունն Այ 'ի նմին հրձիգ լիցի. եւ աւեր լիցի մինչեւ 'ի ժամանակս: 7 *Եւ դարձեալ ողորմեսցի նոցա Ած. եւ դարձուսցէ զնոսա անդրէն յերկիրն. եւ շինեսցեն նոքա զտունն. ոչ եթէ ըստ օրինակի

առաջ

Բ. Օր. 32. 39. Ա. Թագ. 2. 6. Իմաստ. 16. 13. Եսայ. 49. 18. եւ 60. 5. Գործ. 2. 5. Յայտ. 21. 18. ա. զէօրն որդիս. 2. Եզր. 3. 8. եւ 6. 14.

առաջնոյն՝ մինչև լցցին ժամանակք յաւիտենից ։ և յետ այսորիկ դարձցին 'ի գերութենէ աստի. և շինեսցեն զեէմ փառօք՝ և մեծաւ պատուով. և տաճարն այ 'ի նմին շինեսցի յամ. ազգս յաւիտենից. շինուածս փառաւորս. ոպ և խօսեցան զնմանէ մարգարէքն ։ 8 * Եւ ամ հեթանոսք դարձցին ճշմարտութ երկնչել 'ի Տէ այ. և կործանեսցեն՝ և 'ի բաց մերժեսցեն զկուռս իւրեանց ։ 9 * Եւ օրհնեսցեն ամենայն հեթանոսք զՏր. և ժողովուրդն խոստովան լիցի առ Այ իւր ։ և բարձրացուսցէ Տր զժողովուրդն իւր. և ցնծասցեն ամենեքեան, որք սիրեն զՏր Այ ճշմարտութբ և արդարութբ. և արասջիք դուք ողորմութի հարց ձերոց ։ 10 * Եւ արդ՝ որդեակ իմ. գնա դու աստի. զի լինելով լինի՝ զոր ասաց մարգարէն յոնան ։ 11 *‖ Այլ դու պահեսցես զօրէնս և զհրամանս. և լեր դու ողորմած և արդար. զի բարի լինիցի քեզ ։ 12 * Եւ թաղեսցես զիս՝ և զմայր քո ընդ իս. և մի ևս հանդիցիս դու 'ի Նինուէ ։ որդեակ իմ, տես դու. որպէս արար ադամ աքիաքարայ. որ սնոյց զնա. ոպ 'ի լուսոյ տարաւ զնա 'ի խաւար. որչափ չար անցոյց ընդ նա ։ այլ աքիաքարոս ապրեցաւ. և նմա հատուցումն անդրէն հատուցաւ. և էջ նա փոխանակ նորա 'ի խաւարն. և մանասէ արար զողորմութիւս. և ապրեցաւ յաւուր մահու՝ զոր թաքուցին նմա. և ադամ անկաւ յորոգայթն՝ և կորեաւ ։ 13 * Եւ արդ՝ դու որդեակ իմ, տես. որպիսի առնէ ողորմութի. և կամ որպէս փրկէ արդարութիւն ։ և իբրև զայս ասաց. կատարեաց զհոգին իւր 'ի վի մահճացն. զի էր նա ամաց հարիւր և յիսնից. և թաղեաց զնա որդին իւր լի փառօք՝ և բարի վախճանաւ ։ 14 * Եւ յորժամ մեռաւ աննա. թաղեաց և զնա առ հօրն իւրում. և գնաց տոբիա կնաւն իւրով՝ և որդւովքն իւրովք հանդերձ՝ յեկբատանս մարաց՝ առ հռագուէլ աներն իւր ։ 15 * Եւ ծերացաւ նա պատուով մեծաւ. և թաղեաց նա զաներն իւր՝ և զզոքանչն փառօք և պատուով. և ժառանգեաց զտունն նր. և զտունն տոբիթայ հօրն իւրոյ ։ 16 * Եւ մեռաւ նա ամաց հարիւր և քսան և եօթնից, յեկբատանս մարաց ։ 17 * Եւ մինչև մեռեալ էր նր. լուաւ ինքն զկործանումն նինուէի. զոր գերեաց նաբուգոդոնոսոր ասուերոսն ։ և ուրախ եղև տոբիա՝ մինչև մեռեալ էր նր՝ 'ի վերայ նինուէի ։ փառս ետ գոհանալով զԱյ. որում փառք յաւիտեանս յաւիտենից ։ ամէն ։

‖2. Օրէ 6.13. Յեսու. 24.14. 1 Թագ. 7. 8.



Եւ եհար ՚ի պարանոցն նորա երկիցս զօրութեամբ իւրով. եւ հատեալ եբարձ զգլուխ նորա. Յուդ. 13. 10.



Եւ կախեցին զգլուխ նորա ՚ի պարսպէ անտի։ Եւ ելին որդիքն Իսրայելի հալածեցին զասորիս. 14. 7.

# ԳԻՐՔ ՅՈՒԴԻԹԱՅ.

Գլուխ Առաջներորդ։

1 ՅԱՄԻՆ ԵՐԿՈՏԱսաներորդի թագաւորութեանն Նաբուգոդոնոսորայ. որ թագաւորեաց Ասորեստանեայց ՚ի Նինուէի մեծի քաղաքի. յաւուրս Արփաքսադայ. որ թագաւորեացն Մարաց՝ Եկբատանացւոց երկրին։
2 * Շինեաց նա անդ քաղաք. եւ էած շուրջ զեկբատանացւովքն պարիսպս կոփածոյ քարանց. ՚ի լայնութի կանգնոց երից. եւ յերկայնութի վեց կանգնոց. եւ արար զբարձրութի պարսպին եօթանասուն կանգուն. եւ զլայնութիւն յիսուն կանգուն։ 3 * Եւ զաշտարակս նորա հաստատեաց հիմամբք յայսկոյս եւ յայնկոյս դրացն. կանգունս հարիւր յերկայնութի. եւ զլայնութի նորա ՚ի հիմանէն հաստատեաց վաթսուն կանգուն։ 4 * Եւ արար զդրունս նորա անդէն. եւ զբարձրութի նր կանգունս եօթանասուն. եւ լայնութի նորա ՚ի քառասուն կանգնոյ. յելս զօրութեց զօրավարաց զօրաց նորա. եւ ՚ի կարգս հրամանի հետեւակաց նորա։ 5 * Եւ արար պատերազմ յաւուրսն յայնոսիկ Նաբուգոդոնոսոր արքայ, ընդ արքային Արփաքսադայ ՚ի դաշտին մեծի. որ ՚ի սահմանս Ռագաւոյ։ 6 * Եւ ժողովեցան եւ գումարեցան առ նա բնակիչք լեռնակողմանն. եւ ամ որք բնակեալէին զԳետովն Եփրատայ. եւ զԳետկղաթաւ. եւ զհիդկապալ դետով. եւ ՚ի դաշտն արիովք արքային Եղիմացւոց. եւ ժողովեցան ազգք բազումք յոյժ, պատերազմ տալ ընդ որդիսն Քեղօթայ։
7 * Եւ առաքեաց Նաբուգոդոնոսոր արքայ Ասորւոց առ բնակիչս Պարսից. եւ առ բնակիչս արեւմտեայց. զբնակիչսն

կիւլիկեցւոց՝ եւ զդամասկոսի՝ եւ զլի-
բանանու. եւ զամ բնակիչսն. որք բնա
կեալքէին դէմ յանդիման ծովեզե-
րեայցն ։ * Եւ որք յազգէն կարմե- 8
ղացւոց էին, եւ զգաղաադ՝ եւ զվերին գա
լիլեայ. եւ զմեծ դաշտն յեզրայելի ։ * Եւ 9
զամ շամրին. եւ որք 'ի քաղաքս նորա
էին. եւ յայնկոյս յորդանանու գետոյ մին
չեւ յեհեմ. եւ 'ի բետանն. եւ 'ի քեղուս.
եւ 'ի կադես. եւ 'ի գետոյն եգիպտաց-
ւոց. եւ 'ի տափնաս. եւ զռամեսսէն ։
* Եւ զամ երկիրն գեսեմ. մինչեւ 'ի 10
դալ մեմփայ. եւ 'ի տանեայ. եւ զամ
բնակիչս եգիպտացւոց մինչեւ 'ի սահ
մանս եթէովպացւոց ։ * Եւ ստահա 11
կեալ ապախտ արարին զբանսն նաբու
գոդոնոսորայ արքային ասորեստա-
նեայց ամ բնակիչք երկրին. եւ ոչ հաւա
նեցան ընդ նմա երթալ 'ի պատերազմ.
քանզի ոչ երկեան 'ի նմանէն. եւ էին
առաջի նր հրեշտակքն վատթարեալք
եւ անարգեալք յոյժ ։ * Եւ բարկա- 12
ցաւ նաբուգոդոնոսոր 'ի վր երկրին
յոյժ. եւ երդուաւ յիւր թագաւորու-
թիւն՝ եւ յաթոռն իւր, եթէ խնդրեցից
ես՝ ասէ, վրէժ 'ի լերանց անտի կիւլի
կեցւոց. եւ դամասկացւոց. եւ ասորւոց.
ապականել զամենեսին սրով իմով զբնա-
կիչսն մովաբու. եւ զորդիսն ամոնայ.
եւ զամ զհրէաստան՝ եւ զամ եգիպ-
տացիս. մինչեւ 'ի սահմանս երկուց ծո
վուցն ։ * Եւ պատրաստեցաւ. եւ ձա 13
կատեցաւ ամ զօրութբ իւրով 'ի վր
արփաքսադայ արքայի, յամի եօթն եւ
տասներորդի. եւ զօրացաւ 'ի պատե
րազմին իւրում. եւ դարձոյց առ իւր
զամենայն զօրութիս արփաքսադայ. եւ
նորա զամ երիվարս նոցա. եւ զամ զէնս եւ
զկառս նորա ։ * Եւ տիրեաց 'ի վերայ 14
քաղաքացն նորա ։ եւ չոգաւ մինչեւ յէկ-
բատանս. եւ կալաւ զաշտարակս նր.
եւ քանդէր՝ եւ աւար հարկանէր զհրա-
պարակս նորա. եւ զզարդ նորա դնէր
'ի նախատինս նորուն ։ * Եւ էառ նա 15
զարփաքսադ 'ի սահմանս հռագուայ.
եւ սպան՝ եւ սատակեաց զնա սրով իւր
ով ։ * Եւ դարձոյց անդրէն զզօրս իւր. 16
որք եկեալ էին ընդ նմա յայլազգեաց
անտի բազմութի յոյժ. եւ էր անդ
յանհոգութե եւ յուրախութե. ինքն
եւ ամենայն զօրք իւր զաւուրս հարիւր
եւ քսան ։

## Գլ: Բ.

Յամին ութնուտասներորդի՝ յաւ- 1
ուրն երկոտասաներորդի՝ ամ-
սոյն առաջնոյ՝ հանդէս առնէր զօրաց
իւրոց. եւ խորհէր ընդ նոսա. զի խնդրես
2 ցէ զվրէժ յամենայն երկրէ ։ * Եւ
կոչեաց նա զամ մեծամեծս իւր՝ եւ զիշ
3 կուսակալս իւր ։ * Եւ ասէ ցնս զխոր
հուրդս կամաց իւրոց. եւ կատարեաց
զամենայն չարիս երկրին 'ի բերանոյ
4 իւրմէ յականջս զօրացն ։ * Եւ նր պա
տասխանի տուեալ ասեն. սատակես-
ցի ամ մարդ դիմակաց թագաւորի.
եւ որ ոչ հնազանդիցի բանի հրամա-
5 նաց նր ։ * Եւ եղեւ իբրեւ կատարեաց
զխորհուրդս զայս. եւ կոչեաց նաբու
գոդոնոսոր արքայ ասորեստանեայց
զհողոփեռնէս զսպարապետ ամ զօ-
րաց իւրոց՝ եւ ասէ ցնա. այսպէս ասէ
արքայ մեծ՝ տէր 'ի վերայ ամ երկ-
րիս. ահաւասիկ դու ելանիցես առա
ջի երեսաց իմոց. եւ ընտրեսցես՝ եւ
առցես դու ընդ քեզ, որք յուսացեալ
են 'ի զօրութիս իւրեանց. հետեւակս
հազարս հարիւր քսան. եւ բազմութի
յոյժ հեծելոց բիւրս երկոտասան ։ 12000
Եւ ելցես դու ընդ կողմն արեւմտից.
քանզի ապախտ արարին զբանիւք
հրամանաց իմոց. եւ պատուիրեսցես
նց, զի պատրաստեսցեն զերկիրն եւ
զջուրսն. զի ելանեմ ես բարկութբ
իմով 'ի վր նոցա. եւ ծածկեմ զերեսս
ամ երկրի. եւ առնեմ կոխան ոտից
զօրութբ իմով. եւ մատնեցից զնոսա
'ի յափշտակութի ամ զօրաց իմոց.
եւ վիրաւորք նց լցցեն զձորս. եւ զծոր
ծորս իւրեանց. եւ գետք խաղասցեն
յարենէ նց. եւ ածից ես զգերութի
'ի վերայ նոցա 'ի ծագաց երկրի. եւ դու
ելանիցես՝ պատիցես՝ պաշարիցես ինձ
զսահմանս նոցա. եւ ապա մատնիցեն
քեզ զանձինս իւրեանց. եւ պահիցես
ինձ զնոսա յաւուր նեղութե եւ կշտամ
6 բանաց նոցա ։ * Եւ ոչ անխայեսցէ
ակն իմ 'ի վերայ այնոցիկ. որք ապախտ
արարին զիս՝ տալ զնս 'ի մահ եւ յափշ
տակութի յամենայն երկրի քում. զի
կենդանի եմ ես զօրութբ թագաւո-
րութե իմոյ. խօսեցայ՝ եւ առնեմ զա-
մենայն զկամս իմ. եւ դու մի զանցա
նիցես. եւ մի զմիով բանիւ. զոր ետու
քեզ հրաման. այլ կատարելով կատա
րեսցես զամենայն. ոչ եւ ասացի քեզ.
եւ ոչ յերկարեսցես առնել զայդ ։
7 * Եւ ել հողոփեռնէս յերեսաց տեառն
իւրոյ. եւ կոչեաց առ ինքն զամենայն
իշխանս. եւ զզօրագլուխս ասորւոց.
եւ ընտրէր 'ի նոցանէն՝ եւ թուէր արս 'ի
պատերազմ. որպէս եւ հրաման ետ
նմա տէրն իւր. բիւրս երկոտասան ։
եւ հեծելազօր աղեղնաւորս՝ բիւրս եւ
8 երկուս հազարս * Եւ կարգէր՝ եւ կազ
մէր զնս ճակատեալս 'ի պատերազմ.
եւ

և եհար նա ՚ւղտս և զբաստս բազումս յոյժ · բառնալ զկարճ և զկարասի և զխաշն՝ և զարջառ՝ և երամակս այծից ՚ի զարմանս իւրեանց՝ որոց ոչ գոյր թիւ ։ 9 * Եւ տայր ամենայնի նոցա թոշակ ՚ի ճանապարհ ։ 10 * Ոսկի և արծաթ ՚ի տանէ թագաւորին բազում յոյժ ։ 11 * Եւ ինքն և ամենայն զօրք ընդ նմա ՚ի պատերազմ · զի պատրաստեսցէ թագաւորին ելանել ծածկել զամ երկիրն արևմտեայց զինու կառօք՝ և երիվարօք՝ և ընտիր հետևակօք · և որք այլևս խառնեալ էին ՚ի նո իբրև զբազմութիւն մարախոյ · և իբրև զաւազ երկրի · զի ոչ գոյր թիւ բազմութե նոցա ։ 12 * Եւ գնացին նոքա ՚ի նինուէ քաղաքէ՝ գնացս երից աւուրց ՚ի դաշտն բեկեղեթայ · և բանակեցան նոքա մերձ առ լերինն ՚ի ձախակողմն վերին կիլիկիոյ · և եհար զամ զօրս իւր՝ զհեծեալս՝ և զհետևակս · և զէնս՝ և զկառս · և գնաց նա անտի ՚ի լեռնակողմն 13 * Եւ եհար նա զփուդ · և զլուդ · քանդեր՝ և աւար հարկաներ զամ որդիսն հռամսայ և զիսմայելի · որք բնակեալ էին ընդ երեսս անապատին · ընդ հարաւակողմն քեղոնայ ։ 14 * Եւ եանց ընդ եփրատ գետ · և շրջեցաւ նա ընդ միջագետս · և եհար՝ և կանեաց զամ քաղաքս բարձունս · որ ՚ի վերայ ձորոյն նաբրոնայ էին, մինչև ՚ի սահմանս ծովուն ։ 15 * Եւ հասանէր ունէր՝ զսահմանս կիլիկեցւոց · և հարկանէր՝ և սատակէր զամենայն դիմադարձս իւր · և եկն մինչև ՚ի սահմանս յափեթայ, ՚ի հարաւակողմն · որ է դէմ յանդիման արաբիոյ ։ 16 * Եւ արգելեալ փակեաց զամ որդիսն մադիամու · և հրձիգ արար զամ յարկս և զխորանս նոցա · և աւերէր՝ քանդէր զամենայն գոմս խաշանց նց ։ 17 * Եւ էջ նա ՚ի դաշտն դամասկոսի յաւուրս հնձոց ցորենոյ · և հրձիգ արար զամենայն զանդս և զագարակս նց · և զհօտս՝ և զանդեայս նց արար յապականութի · և զքաղաքս նց աւար հարկաներ · և զմանկունս նց ջարդեր · և հարկանէր՝ և սատակէր զերիտասարդս նոցա ՚ի բերան սրոյ ։ 18 * Եւ անկաւ ահ և երկիւղ ՚ի վերայ բնակչաց ծովեզերեայց · տիւրոսի և սիդոնի · և ՚ի վերայ բնակչաց սիւրայ · և իւկինեայ ։ զամ բնակիչսն յեմնանու · և որք բնակեալ քեին յազովտոս · և յասկաղոնի, երկեան յոյժ ՚ի նմանէ ։

## ԳԼ. Գ ։

1 Եւ առաքեցին առ նա՝ խօսել ընդ նմա բանիւք խաղաղութե՝ և ասեն ։ 2 * Ահաւասիկ մեք ծառայք նաբուգոդոնոսորայ եմք · և կացեալ եմք առաջի քո, արա ընդ մեզ՝ որպէս և հաճոյ թուի քեզ ։ 3 * Ահա տունք մեր՝ և ամ դաշտք ցորենոյ · և հօտք՝ և անդեայք · և ամենայն գոմք խաշանց մերոց առաջի աչաց քոց են · արա որպէս և բարի թուի քեզ · զի հաւ և քաղաքք մեր՝ և բնակիչք նոցա ծառայք քո են · եկ՝ մուտ ՚ի սոսա · որպէս և բարւոք թուի քեզ ։ 4 * Եղիցին մերայինք ամենայնք 5 ՚ի ներքոյ օրինի քոյ ։ * Մեք ես · և որդիք մեր ծառայք քո եմք ։ 6 * Եկ առ մեզ խաղաղարար տր · և կառավարեա զծառայութիս մեր · որպէս հաճոյասցի քեզ ։ և եկին արք հրեշտակք առ հողոփեռնէս · և պատմեցին նմա ըստ բանից ըստ այսոցիկ ։ 7 * Եւ էջ ՚ի ծովեզրն՝ ինքն և զօրք իւր · և պահապանս կացուցանէր ՚ի քաղաքս բարձունս · և եառ նա ՚ի քաղաքաց անտի արս ընտիրս պատերազմակիցս իւր ։ 9 * Եւ ելին ընդ առաջ նր քաղաքքն այնոքիկ ։ 10 * Երգօք՝ և պսակօք՝ և ծնծղայիւք՝ և թմբկօք ։ 11 * Եւ փորեաց նա զսահմանս նց · և ՚ի բաց ընկէց զամենայն զանտառս նոցա ։ 12 * Եւ էր հրաման տուեալ նմա սատակել զաստուածս երկրին ։ 13 * Զի միայն նաբուգոդոնոսորայ պաշտօն տարցին ամենայն ազգք և ազինք · և կարդասցեն զնա աած ։ 14 * Եւ եկն նա դէմյանդիման եզրայելոմայ · որ մերձ է առ բնակիչսն · որ է դէմ յանդիման սարոյն մեծի հրէաստանի 15 * Եւ բանակեցաւ նա ՚ի մէջ գայեայ և բասանու · և եղև անդ ամիս մի ժողովել ռոճիկս և զարմանս զօրաց իւրոց ·

## ԳԼ. Դ ։

1 Իբրև զայն լուան որդիքն իէլի՝ և բնակիչք հրէաստանի · զոր արար հողոփեռնէս ընդ ազգս՝ և ընդ հեթանոսս՝ և զօրագլուխք արքային ասորեստանեայց · և որպէս քանդեաց զամ մեհեանս նոցա · և արար զնոսա յապականութի ։ 2 * Եւ երկեան նոքա յոյժ յերեսաց նորա · և վասն եէմի՝ և տանն տն այ իւրեանց խռովեցան · զի ընդ այն ժամանակս էին դարձեալ ՚ի գերութէ անտի իւրեանց · և իբրև նորք էին ժողովեալք հրէաստան · և սեղանն տն այ իւրեանց՝ և սպասքն և տունն ՚ի պղծութէ անտի դեռևս էր սրբեալ ։ 3 * Եւ առաքեցին նոքա յամ սահմանս շամրնի և ՚ի կոնբեթրոն · և ՚ի բեդմային · և յերիքով · և ՚ի քօքայ · և ՚ի սոմայն · և ՚ի

հոլովոսն շաղխմայ։ *Եւ հասին և կա 4
լան զամ գլուխս լերանց բարձանց. և
պարսպեցին զգեօղս. որք էին 'ի նմա.
և կազմեցին, և եդին անդ զդարմանս
'ի գործ պատերազմի. զի ընդ այն ժա
մանակս էին հնձեալ զանդս նոցա։
*Եւ գրեաց Յովակիմ քահանայ մեծ՝ 5
որ էր յաւուրսն յայնոսիկ յԵրուսա֊
ղէմ. բնակչաց Բաատիղղայ. և Բես֊ (Բեթփա֊ ղիմայ)
մեսթայ. որ է ընդդէմ Եզրոմելայ.
ընդդէմ դաշտին՝ որ է մերձ առ Դով֊
թայիմ. *Եւ ասէ՝ ելէք՝ և կալէք 6
զանցս լեռնային կողմանցն։ զի ընդ
այն էին մուտք 'ի Հրէաստան. և էր
դիւրին նոցա արգելուլ զնոսա. քան֊
զի էին նեղք անցք կրճից. զոր կա֊
րէին պահել արք երկու։ *Եւ արա֊ 7
րին որդիքն Իլի՝ որպէս և հրամայեաց
նմա Յովակիմ քահանայ մեծ. և ծերա
կոյտ ժողովրդեանն Իլի. որք նստէին
յԵմ։ *Եւ կարդացին առ Տր ամ 8
այր Իլի՝ յամ սրտէ իւրեանց. և խո֊
նարհեցուցին զանձինս իւրեանց՝ ին֊
քեանք, և կանայք իւրեանց։ *Եւ 9
ամ պանդուխտք և վարձկանք իւր֊
եանց՝ հանդերձ անասնօք իւրեանց
պաշարեցան. և արծաթագին ծա֊
ռայք նոցա արկին քուրձ զմիջօք իւր
եանց։ *Եւ ամ այր Իլի կանամբք 10
և մանկամբք իւրեանց. որք բնակեալք
էին յԵմ. 'ի գուձս իջեալ առաջի
տաճարին Տն աղաչէին. և արկին մո
խիր զգլխօք իւրեանց. և թօթա֊
փէին զքուրձն առաջի Տն. և զսրբու
թեան սեղանօքն քուրձ արկանէին. կար
դացին նոքա առ Ած Իլի 'ի միասին
յամ սրտէ. զի մի մատնեսցէ 'ի յափշ
տակութիւն զտղայս նոցա՝ և զկանայս
նոցա յաւար. և զքաղաքս ժառան֊
գութեան նոցա յապականութիւն. և զսր֊
բութիւն 'ի պղծութիւն՝ և 'ի նախա֊
տինս՝ և յայպն հեթանոսաց։ և լուաւ
Տր ձայնի նց. և ետես զնեղութիւն
նց. և էր ժողովուրդն 'ի պահս բա֊
զումս ընդ ամ Հրէաստան և յԵմ
առաջի սրբութեանն Տն ամենակալի։
*Եւ Յովակիմ քահանայ մեծ՝ և ա֊ 16
մենեքեան որք կային առաջի Տն՝ քա
հանայք և պաշտօնեայք Տն քուրձ
զգեցեալ էին. և մատուցանէին զող
ջակէզսն հանապազորդս՝ և զաղօթսն.
և զկամաւ յօժարութեանն. և զպատա֊
րագս ժողովրդեանն։ *Եւ էր մո֊ 17
խիրն 'ի վերայ վարշամակաց նց. որ
կայր 'ի վերայ գլխոց նոցա. և դոչէին
առ Տր յամենայն սրտէ իւրեանց.
յայցելութիւն և 'ի բարիս առնել
տանն Իսրայէլի։

## Գ Լ: Ե.

1 Եւ պատմեցին Հողոփեռնեայ զօ֊
րագլխի զօրացն Ասուր, եթէ
որդիքն Իլի պատրաստեցան 'ի պա֊
տերազմ. և զանցս լեռնային կող֊
մանցն փակեցին. և պարսպեցին զամ
գլուխս լերանց բարձանց. և թաքու֊
2 ցին 'ի դաշտի որոգայթս։ *Եւ բար
կացաւ յոյժ Հողոփեռնէս բարկութբ
մեծաւ. և կոչեաց նա զամ իշխանս
Մովաբայ. և զզօրագլուխսն ամոնայ՝
և զամ նախարարս ծովեզերեայս։
3 *Եւ ասէ ցնոսա. պատմեցէք դուք
ինձ որդիք Քանանու. ով են ժողո֊ (ոյք են ժո֊ ղովուրդս այսոքիկ.)
վուրդս այս. որք նստին 'ի լեռնակող֊
մանս. և զինչ քաղաքք են. յորում
բնակեալք են նոքա՝ և կամ բազմու֊
թի զօրաց նոցա. և իւ է ոյժ նոցա՝ և
կամ զօրութի. և կամ ով է թագա
ւոր նոցա՝ և առաջնորդ զօրաց նոցա։
4 *Եւ ընդէր թիւրեցին զմիտս իւր֊
եանց. զի մի եկեսցեն ընդ առաջ իմ.
այլ հպարտացան քան զամ բնակիչս
5 արեւմտեայցս։ *Եւ ասէ ցնա աքիոր
առաջնորդ ամ որդւոյն ամոնայ. լու֊
իցէ Տր բանից ծառայի քո. և պատ
մեցից քեզ զճշմարիտն վասն ժողովր
դեանդ. որք բնակեալք են 'ի կող֊
մանդ յայդմ. որ մերձ առ քեզս է. և
ոչինչ ելանէ սուտ 'ի բերանոյ ծա
6 ռայի քո։ *Ժողովուրդս այս՝ են
7 յազգէ քաղդէացւոց։ *‖Եւ պանդխ (‖Ծննդ. 11.31.)
տեցան զառաջինն 'ի Միջագետս. զի
ոչ կամեցան պաշտել զդիս հարց իւր
8 եանց յերկրին քաղդէացւոց։ *Եւ
ելին նոքա 'ի հայրենի երկրէն իւր֊
եանց. և երկիր պագին Այ երկնաւո
րի. զոր ճշմարտեալ ծանեան. և ե֊
կեալ ‖ գնացին նոքա 'ի Միջագետս. և (‖Ծննդ. 12.1.)
պանդխտեցան անդ աւուրս բազումս.
և ասէ ցնոսա Ածն նոցա՝ ելանել նց
'ի պանդխտութենէն. և գալ յերկիրս
Քանանու. և բնակեցան անդ. և մեծա
ցան ոսկւով և արծաթով՝ և անաս֊
9 նով բազմաւ։ *‖Եւ իջին նոքա յԵ֊ (‖Ծննդ. 46.3.)
գիպտոս. քանզի եղև սով յերկրին
Քանանացւոց. և պանդխտեցան անդ
մինչև սնան. և եղեն անդ բազում
յոյժ. և ոչ էր թիւ ազգի նոցա։
10 *Եւ յարեաւ 'ի վերայ նոցա արքայն
եգիպտացւոց չարչարել զնս ցաւօք՝
և աղիւսով. և արկին զնոսա 'ի ծառայ
11 ութի։ *‖Եւ կարդացին նոքա առ Ած (‖Ելք. 12.41.)
իւրեանց. և եհար նա զերկիրն եգիպ
տացւոց հարուածովք անբժշկութեն։
և հալածեցին և հանին զնս եգիպտա
12 ցիքն յերեսաց իւրեանց։ *‖Եւ ցամա (‖Ելք. 14.29.)
քե֊

քեցոյց Ա՟Ծ զծովն կարմիր առաջի նց՟ ։
13 * Եւ հան զնոսա 'ի Ճանապարհ սի_
նայ · և 'ի կադէս բառնեայ՝ և հանին
14 զա՟մ բնակիչս անապատին ։ * Եւ բնա
կեցուցին յերկրին ամորհացւոց · և
զա՟մ զեսեբոնացիսն սատակեցին զօ_
րութբ իւրեանց · և անցին նոքա ընդ
յորդանան · և ժառանգեցին նոքա
20 զա՟մ երկիրն ։ * Եւ մերժեցին՝ և հա
նին յերեսաց իւրեանց զքանանացին ·
և զփերեզացին · և զյեբուսացին · և
զսիւքեմ · և զա՟մ զգերգեսացիս · և
բնակեցան յերկրին աւուրս բազումս ։
21 * Եւ մինչև ոչն մեղանչէին առաջի
Ա՟Ջն իւրեանց · էր ընդ նոսա ա՟մ բա
րութիւն · զի Ա՟Ծ որ ատեայ զանիրաւ
22 ութիւն էր ընդ նոսա ։ * Եւ յորժամ
'ի բաց մերժեցին յիւրեանց զՃանա_
պարհս ուխտին Ա՟Ջ , սատակեցան 'ի
պատերազմունս բազումս յոյժ · և գե
րեցան յերկիր օտար · որ ոչ էր իւր_
եանց · և տաճարն Ա՟Ջ իւրեանց եղև
'ի կործանումն · և քաղաքք նց՟ մատ_
23 նեցան 'ի ձեռս թշնամեաց նց՟ ։ * Եւ
այժմ դարձան առ Տ՟ր Ա՟Ծ իւրեանց ·
և ժողովեցան 'ի գերութէ իւրեանց ·
ուր էին ցրուեալք · և կալան զքա_
ղաքն զե՟մ · ուր էր սրբութին · և բնա
կեցան 'ի լեռնակողմանն · զի էր աւե
24 րակ ։ * Եւ արդ այժմ Տ՟ր · եթէ ան_
գիտութի ինչ լինի 'ի ժողովրդեանն
նոցա · և մեղանչիցեն Ա՟Ջ իւրեանց ·
ակնկալեալ սպասեսցուք այսմիկ · զի
այս է նոցա գայթագղութի · և ապա
գումարեսցուք 'ի վերայ նց՟ · և տացուք
25 'ի վերայ նց՟ պատերազմ ։ * Ապա թէ
չիցէ ինչ նց՟ անիրաւութի առ Ա՟Ծն
իւրեանց · զանց արասցուք առ նոքօք
տէր · գուցէ պաշտպանիցէ նոցա Տ՟ր
Ա՟Ծն իւրեանց · և լինիցիմք մեք յա_
26 մօթ նախատանաց ա՟մ երկրի ։ * Եւ
եղև իբրև դադարեաց աքիոր 'ի խօ_
սելոյ զբանս զայս · տրտնջեաց ա՟մ բա
նակն · որք շուրջ էին զխորանաւն ։
27 * Եւ ասեն իշխանքն ցհոլոփեռնէս ·
և որք բնակիչքն էին ծովեզերեայց ·
և մովաբացւոց · զի պատուհասեսցէ
զաքիոր · զի ոչինչ երկնչիմք մեք յորդ_
ւոցն Ի՟Ղի · ժողովուրդ՝ որ ոչ ունի
կարի ինչ զօրութի 'ի պատերազմի ։
28 * Արդ ելցուք մեք · և լինիցին նոքա
կերակուրք ամենայն զօրաց մերոց ·
տէր հոլոփեռնէ ։

## Գլ ։ Զ ։

1 Եւ յորժամ դադարեցին 'ի խռո_
վել իւրեանց · որք էին շուրջ
զխորանաւն իւրեանց · և ասէ հոլո_
փեռնէս զօրագլուխ զօրացն ասուր
ցաքիոր առաջի ա՟մ զօրացն այլազ_
գեաց ։ Ո՞վ ես դու աքիոր · որ դիմա_
կաց ես ժողովրդեանն այլազգեաց ա_
մենեցուն՝ և առ որդիսն մովաբայ · և
2 որք վարձկանքս են յեփրեմայ ։ * Զի
մարգարէացար մեզ · ո՞վ և օրս այս ·
և ասես թէ մի տացուք պատերազմ
ընդ որդիսն Ի՟Ղի · զի Ա՟Ծն նց՟ պաշտ_
պան է նոցա՝ և ո՞վ է Ա՟Ծ բաց 'ի նա_
բուգոդոնոսորայ ։ Նա առաքէ զզօրու
թի իւր · և սատակէ զնոսա յերեսաց
երկրի · և ոչ փրկէ զն՟ս Ա՟Ծն նոցա ։
3 * Այլ մեք ծառայք նր՟ վանեմք զն՟ս
իբրև զայր մի · և ոչ կարասցեն կալ
ընդդէմ հեծելազօր երիվարաց մե_
րոց · և ջնջեսցուք զնոսա նոքօք · և
զլերինս նց՟ արբուցանեմք յարենէ նց՟ ·
և դաշտք նոցա լցցին դիականմբք նց՟ ·
և ոչ ևս կարիցեն կալ առաջի մեր ·
4 այլ կորնչելով կորիցեն ։ * Ասէ ար_
քայ նաբուգոդոնոսոր տէր ա՟մ երկ_
րի · քանզի ասաց՝ և ոչ ընդունայնա_
5 ցան բանք բերանոյ նորա ։ * Այլ դու
աքիոր վարձկան ամոնայ՝ որ խօսեցար
զբանս զայս յանիրաւութէ քում · ո՛չ
ևս յաւելցես տեսանել զերեսս իմ յօ_
րէ յայսմանէ մինչև խնդրեցից զվրէժ
յազգէն · որք յեգիպտոսէ ելին · և
ապա անցցէ սուր զօրացս իմոց ընդ
6 կողս քո ։ * Եւ կործանեսցիս ընդ վի
րաւորս բազումս՝ յորժամ դարձայց ·
այլ այժմ դարձուսցեն զքեզ ծառայք
իմ 'ի լեռնակողմն՝ և պահեսցեն զքեզ
յանցս քաղաքի միում , որ յանցս Ճա_
նապարհացն է · և մի կորնչիցիս՝ մին
չև սատակեսցիս նոքօք հանդերձ · և
եթէ յուսաս սրտիւ քում , եթէ ոչ
մատնիս՝ յայդ ինչ մի վստահասցիս ·
զի խօսեցայ՝ և ոչ անցցէ բան մի 'ի
7 բանից իմոց ։ * Եւ ետ հրաման հոլո
փեռնէս ծառայից իւրոց · որք կացին
առաջի նր՟ · ունել և կապել զաքիոր ·
և տանել զնա 'ի բեթուղիայ · և մատ_
8 նել զնա 'ի ձեռս որդւոցն Ի՟Ղի ։ * Եւ
կալան զնա ծառայք նր՟ · և ածին զնա
արտաքոյ բանակին 'ի դաշտ անդր · և
գնացին նոքա 'ի դաշտէ անտի · և եկին
'ի լեռնակողմն աղբերց 'ի ներքոյ բե_
թուղիայ · որ է շամիրին · և իբրև տե_
սին զն՟ս արք քաղաքին 'ի վերայ գլխոյ
լերինն · առին նոքա զզէնս իւրեանց ·
և յարձակեցան 'ի վերայ նց՟ 'ի գլուխ
լերինն · և ա՟մ այր պարսաւոր կալան
զելս նց՟ · և քարձիգ արարին 'ի վերայ
9 նոցա ։ * Եւ մտին նոքա ընդ լեռնո_
տամբն՝ և կապեցին զաքիոր · և ընկէ
ցին զնա առ լեռնոտինն · և նոքա գնա

ցին՝ և դարձան առ տէրն իւրեանց։ 10 *Եւ իջին որդիքն Իլի ՚ի քաղաքէ անտի. և հասին ՚ի վերայ նորա. և լուծին զնա. և տարան ՚ի բեթուղիայ. և կացուցին զնա ընդ իշխանս քաղաքին իւրեանց։ 11 *Որք էին յաւուրսն յայնոսիկ՝ ոզիա որդի միքիայ յազգէ շմաւոնի. և քարմի որդի մեղքիէլի։ 12 *Եւ ժողովեցին զամ՝ զծերս քաղաքին՝ և զամ՝ երիտասարդս. և զամ կանայս յեկեղեցին. և կոչեցին զաքիոր ՚ի մէջ ամ ժողովրդեանն. և հարցանէր ցնա ոզիա՝ եթէ վասն էր եղև ընդ քեզ այդ անցք. և նա տայր պատասխանի. և պատմէր զբանս խորհրդոյն հողոփեռնեայ. և զամ զբանս. զոր խօսեցաւ ինքն ՚ի մէջ իշխանացն՝ որդւոցն ասուր։ 13 *Զորինչ միանգամ մեծաբանեալ խօսեցաւ հողոփեռնէս վն տանն Իլի։ 14 *Եւ ՚ի գուձս իջեալ ամ ժողովուրդ երկրին, երկիր պագանէին Ա.Ծ. աղաղակէին՝ և ասէին։ 15 *Տէր Ա.Ծ երկնից. տես զամբարտաւանութին նոցա. և ողորմեաց խոնարհութե ազգիս մերում. և նայեաց ՚ի սրբութին քո Տր յաւուրս յայսմիկ։ 16 *Եւ աղաչեցին՝ և մխիթարեցին զաքիոր. և գովեցին յոյժ զնա։ 19 *Եւ էառ զնա ոզիա յեկեղեցւոյ անտի. և տարաւ ՚ի տուն իւր։ 20 *Եւ արար նա կոչունս ծերոցն և քահանայիցն. և կարդացին զգիշերն զայն ամենայն առ Տր Ա.Ծ իսրայէլի։

ԳԼ. Է.

‖ Մկբ. 2. 7.

Եւ՛‖ ՚ի վաղիւն անդր պատուիրեաց 1 հողոփեռնէս զօրաց իւրոց. և ժողովեցան՝ որք եկեալ էին նմա յօգնականութին. չուել՝ գնալ ՚ի բեթուղիայ՝ և ՚ի վր ելից լեռնակողմանն. և հասանել տալ պատերազմ ընդ որդիսն Իլի։ 2 *Եւ կազմեցան՝ պատրաստեցան, գնացին յաւուրն յայնմիկ ամ այր պատերազմի. և ամ հետևակազօր պատերազմողացն հարիւր և եօթանասուն հազար. և հեծելազօրքն վառեալ երկոտասան հազար. թող զայլ ուամիկն ամ. և զկահ և զկարասի բազում աստիկ յոյժ։ 3 *Եւ բանակեցան նոքա ՚ի հովիտն. որ մերձ էր ՚ի բեթուղիայ ՚ի վր աղբերն. և հարին զառէջս բանակացն ընդ հարաւակողմն ՚ի լայնութին մինչև ՚ի դօթայիմ. և մինչև ՚ի բեղբեմ. և յերկայնութին ՚ի բեթուղիայ մինչև ՚ի կիամ. որ էր ընդդէմ յեզրայելօմայ. այս ինքն է յեզրայէլ։ 4 *Եւ որդիքն Իլի իբրև տեսին զայն չափ բազմութին խռովեցան յոյժ. և ասէին այր ցընկեր իւր. այժմ լեզուն նոքա զամ երեսս երկրի. և ոչ լերինք և բարձունք՝ և ոչ ձորք և բլուրք կարասցեն կալ առաջի զօրութե դոցա։ 5 *Եւ առին որդիքն Իլի այր իւրաքանչիւր զզէն իւր. և լուցանէին ջահս ՚ի վր աշտարակաց քաղաքին. և կային՝ և պահէին զայն։ 6 *Եւ յաւուրն երկրորդի եհան հողոփեռնէս զամ զհեծելազօրն դէմ յանդիման որդւոցն Իլի՝ որք էին ՚ի բեթուղիայ. և էհաս նա ՚ի վերայ ելից քաղաքին նց. և զաղբիւրս ջուրցն քննեաց. և անձապարէր պաշարել զնոսա. և հարկանէր ՚ի վր նոցա բանակս բանակս յարանց պատերազմողաց. և ինքն չուէր՝ գնայր անդրէն ՚ի բանակն իւր։ 8 *Եւ մատեան առ նա ամ որդիքն ամոնայ. և ամ ժողովք և առաջնորդք որդւոցն մովաբու. և զօրագլուխք ծովեզերեայցն՝ և ասեն։ 9 *Տուիցէ բանից ծառայից իւրոց տէր մեր. զի մի՛ լիցին հարուածք զօրաց քոց. զի ժողովուրդ որդւոցս Իլի ոչ են յուսացեալ ՚ի նիզակս իւրեանց և ոչ ՚ի զէնս. այլ ՚ի վերայ լերանց բարձանց իւրեանց. յորում բնակեալ են ՚ի նոսա. ոչ իսկ հնար է հասանել ՚ի նոսա. և արդ տէր՝ մի՛ տար դու ընդ նոսա պատերազմ մարտի. և ոչ անկցի մի այր ՚ի զօրաց քոց. այլ հանդարտեաց դու. և մնա ՚ի բանակիս քում. և ապրեցուցանես դու զզօրս քո. այլ կալցին ծառայք քո զաղբիւրս ջուրցն. որ ելանէ ՚ի լեռնոտանէ անտի. քանզի անտի ըմպեն ամենայն բնակիչք քաղաքիդ. և ստատկին նոքա ՚ի ծարաւոյ. և ապա ինքեանք իսկ մատնեսցեն զքաղաքն ՚ի ձեռս քո. և ամենայն զօրավարօք մերովք ելանեմք ՚ի վերայ լերանց բարձանց՝ որք մերձաւորք իցեն. և բանակիցուք ՚ի վերայ նոցա իբրև զայր մի. քանզի սպառեսցին նոքա ՚ի սովէ և ծարաւոյ. ինքեանք՝ և կանայք իւրեանց՝ և որդիք իւրեանց՝ մինչչև եկեալ իցէ ՚ի վերայ նց սուր. տապաստ անկցին ՚ի հրապարակս քաղաքին իւրեանց. և հատուսցես նոցա զհատուցումն չարութե նոցա. փոխանակ զի ՚ի կախ կացին. և ոչ հնազանդեցան քեզ խաղաղութբ։ 10 *Եւ հաճոյ թուեցաւ խորհուրդն հողոփեռնեայ և ամենայն ծառայից նորա. և հրամայեաց առնել՝ որպէս և խօսեցան. և գնացին յորդւոցն ամմոնայ. և ընդ նոսա հազարք հինգ յորդւոցն ասուր. և բանակեցան նոքա ՚ի ձոր հովտին. և հասին՝ կալան նոքա զաղբիւրս ջուրցն որդւոցն Իլի. և ելին որդիքն եսաւայ. և որդիքն ամմոնայ.

մօնայ. և բանակեցան ընդ կողմն լե
րինն՝ ընդդէմ դօթայիմայ. և առաքե
ցին՝ ի նոցանէն ՝ի հարաւակողմն կոյս՝
և ընդ հիւսիսի ընդդէմ եգրեբելիայ.
որ է մերձ ՝ի քուշ. որ է ՝ի վր ձորոյն քու
մարայ. և այլ զօրք ասորեստանեայյն
բանակեցան ՝ի դաշտին. և ծածկեցին
զամենայն զերեսս երկրին. և այլ ռա
միկքն՝ կահիւ կարասով և խորանօք
համդերձ բանակեցան անդէն բազ
մաւ մեծութեամբ. և որդիքն իսրայէլի դա
ղակեցին առ Տր Ած իւրեանց. զի զա
հի հարեալ սպառեալ էին ոգիք նց.
քանզի պատեալ պաշարեալ էր զնոսա
թշնամեաց նոցա. և ոչինչ էր հնար
նոցա ելանել ՝ի միջոյ նոցա. և կացին,
պաշարեցին զնոսա զօրքն աասուրայ զի
նու կառօք և երիվարօք իւրեանց. զաւ
ուրս երեսուն և չորս։ * Եւ ըլքան՝ և 11
պարտասեցան ամ բնակիչք բետիլու
այ. և ամ ամանք նց սպառեալք էին
՝ի ջրոյ. և գուբք սպառեալք և թա
փեալք էին. և ոչ գոյր ըմպելի միում
աւուր. և զոր ըմպէինն, չափով և կշ
ռով ըմպէին։ *Եւ ՝ի վարանի և ՝ի տա 12
րակուսի կային կանայք և մանկունք
նց. և երիտասարդք նոցա լքեալք
էին ՝ի ծարաւոյ. և գլորեալք կային
է հրապարակս քաղաքին. և ընդ անցս
դրանցն. և ոչ ուստեք էր նոցա մխի
թարութի։ և ժողովեցան ամենայն
ժողովուրդն ՝ի վերայ ոզիայ՝ և ՝ի վր
իշխանաց քաղաքին. երիտասարդք և
կանայք՝ և մանկտիք. և լացին նոքա
ձայնիւ մեծաւ. և ասեն առաջի ամ ծե
րոց ժողովրդեանն։ * ‖ Դատ արասցէ 13
Ած ՝ի մէջ մեր և ՝ի մէջ ձեր. զի արա
րիք առ մեզ զխոս անիրաւութե, առ
՝ի չխօսելոյ ձեր ՝ի խաղաղութի ընդ
որդիսն ասուրայ։ *Եւ արդ ոչոք է՝ որ օգ 14
նէ մեզ. այլ մատնեաց զմեզ Ած ՝ի
ձեռս նոցա. զի տապաստ անկցուք ա
ռաջի նոցա, և ՝ի կորուստ մեծ ՝ի ծա
րաւոյ։ * Արդ այժմ աղաչեցէք դուք 15
զնա. և տուք յաւար նց զքաղաքս ամ։
* Զի լաւ է մեզ լինել ՝ի յափշտակու 16
թիւն նց և ՝ի ծառայութի և կեցցեն
անձինք մեր. քանզի ոչ կարեմք տե
սանել զմահ տղայոց և զկանանց աչօք
մերովք. զի պակասեալ և սպառեալ
են ոգիք նոցա։ * Արդ վկայեմք ձեզ 17
առաջի երկնից և երկրի. և Ած հարցն
մերոց. որ խնդրէ զվրէժ անձանց մե
րոց. և ըստ մեղաց հարցն մերոց. զի
մի արասցէ ըստ բանիցս այսոցիկ յաւ
ուրս յայսմիկ։ *Եւ եղև լալումն և ող 18
բումն մեծ ՝ի վր եկեղեցւոյն ամենե
ցուն ՝ի միասին. և գոչեցին նոքա առ

‖ Յուդթ. 5. 21.

23 Տր Ած ձայնիւ մեծաւ։ * Եւ ասէ
ցնոսա ոզիա. քաջալերեցարուք եղ
բարք. և համբերեցէք աւուրս ևս
հինգ՝ յորում աւուր առաքէ Տր զո
24 ղորմութի իւր ՝ի վերայ մեր։ * Զի
25 ոչ թողու նա զմեզ իսպառ։ * Եւ
յորժամ անցանիցեն այսք աւուրք. և
ոչ եկեսցեն ՝ի վերայ մեր օգնութիք՝
արարից ձեզ ըստ բանիցս այսոցիկ.
և արձակեաց զժողովուրդն ՝ի տունս
իւրեանց. և յաշտարակս և ՝ի պա
րիսպս քաղաքին զգուշանալ ՝ի թշնա
մեացն. և էին ՝ի վարանս և ՝ի մեծ տա
րակուսանս։

## Գլ. Ը։

1 Եւ լուաւ յաւուրսյայնմիկ յուդիթ
դուստր մերարեայ. որդւոյ ոքս
զեայ. որդւոյ յօսեփու. որդւոյ ոզիե
ղայ. որդւոյ եղկիայ. որդւոյ անանիայ.
որդւոյ գեդէօնի. որդւոյ ռափայի.
որդւոյ եղիեսու. որդւոյ քեղկեայ.
որդւոյ եղիաբու. որդւոյ նաթանայե
լի. որդւոյ սամամիէլեայ. որդւոյ սա
2 րասադդէ. որդւոյ իէլի։ * Եւ այրն
նորա մանասէ յազգէ նորուն. և ՝ի
հայրենեաց նորա։ և մեռաւ այրն նր
3 յաւուրս հնձոց գարեաց։ * Զի կայր
նա ՝ի վերայ հնձողաց իւրոց ՝ի դաշ
տին. զի յընթանալ խորշակին և գալ
հասանիլ ՝ի վերայ գլխոյ նորա. յորմէ
և մեռաւ իսկ ՝ի բետիղուայ ՝ի քաղա
քի իւրում. և թաղեցաւ նա առ հարս
իւր՝ յագարակին. որ մերձ էր առ դօ
4 թայիմն. և ՝ի բաղմօն։ * Եւ նստէր
յուդիթ այրի ՝ի տան իւրում ամս ե
5 րիս և ամիսս չորս։ *Եւ արար նա տա
ղաւար ՝ի տանիս տանն իւրոյ. և էած
քուրձ ՝ի վերայ միջոյ իւրոյ. և էր ար
կեալ զիւրև զհանդերձ այրութե։
6 *Եւ պահէր նա զամ աւուրս այրու
թեն իւրոյ. բայց միայն զօր շաբա
թուն, և զամսամտից՝ և զտարեկա
նացն. և զուրախութե տանն Իլի։
7 *Եւ էր նա գեղեցիկ յոյժ տեսլեամբ։
և եթող նմա մանասէ այրն նր ոսկի
և արծաթ. ծառայս, և աղախինս. և
անդս. և ագարակս. և անասունս. և
8 կինքն յուդիթ դարմանէր զայն։ *Եւ
ոչոք ինչ ասէր վս նր բան չարութե.
զի երկիւղած էր նա յոյժ ՝ի Տէ։
9 *‖Եւ իբրև լուաւ նա զբանս ժողովր
դեանն. զոր խօսեցան ապիրատութե
ընդ իշխանսն. զի պակասեալ էին նք
՝ի ծարաւոյ. և լուաւ յուդիթ զբանս
ոզիայ. զոր խօսեցաւ նա ընդ ժողո
վուրդսն. և որպէս վկայեաց նց մատ
նել զքաղաքն յետ հինգ աւուրց ՝ի
ձեռս

‖ Մէր. 7. 25.

ձեռս ասորեստանեայցն: Եւ առաքեաց զնաժիշտն իւր. որ էր ՚ի վերայ ամ(ենայն) ընչից իւրոց. եւ կոչեաց զոզիայ. եւ զքաբրին. եւ զքարմին. եւ զծերս ամ(ենայն) քաղաքի իւրոյ: 10 * Եւ եկին առ նա. եւ ասէ ցնո(սա). Լուարուք ինձ բնակիչք բետիղուայ. զի ոչ ուղիղ են բանք ձեր՝ զոր խօսեցայք առաջի ժողովրդեանդ յաւուրս յայսմիկ. եւ երդմամբ հաստատեցէք՝ զոր խօսեցայքն առաջի Ա՟յ ՚ի միջի ձերում. եւ ասացէք մատնել զքաղաքս ՚ի ձեռս թշնամեաց մերոց, եթէ ոչ Տր առաքէ զօգնականութի(ւն) մեզ: 11 * Եւ արդ դուք՝ որք փորձէք զԱ՟ծ յաւուրս յայսմիկ. արդ հաստատեալ կայ այդ ՚ի մէջ որդւոց մարդկան: 12 * Եւ ահա այժմ զՏր զամենակալ հարցէք. եւ ոչ ինչ գիտասջիք: 13 * Զի խորութի(ւն) ՚ի սրտի մարդոյ ոչ գտանի. եւ բանից սրտից նորա ոչ հասանիցէք. զիա՞րդ զԱ՟ծ. որ արար զայս ամենայն՝ քննել մարթիցէք. եւ զկամս նորա գիտիցէք. եւ կամ ՚ի խորհուրդս նորա հայիցէք. քաւ լիցի եղբարք. մի՛ բարկացուցանէք զՏր Ա՟ծ մեր: 14 * Եթէ ոչ կամիցի յաւուրս հինգ օգնել ձեզ. նա ունի իշխանութի(ւն) յորս կամի պաշտպան լինել մեզ. որում եւ իցէ. եւ կամ սատակել զմեզ առաջի թշնամեաց մերոց: 15 * Այլ դուք մի՛ գրաւէք ՚ի ձեզ զխորհուրդս Տն Ա՟յ ձերոյ. զի ոչ ո՛ք մարդոյ է Ա՟ծ սպառնալիք. եւ ոչ ո՛ք որդւոյ մարդոյ զի տանջէ: 16 * Արդ այժմ կացեալ ակնկալցուք գտանել ՚ի նմանէ զողորմութի(ւն), աղաչեսցուք՝ եւ կարդասցուք առ նա յօգնականութիւն մեզ. եւ լուիցէ ձայնի աղօթից մերոց՝ եթէ իցէ նմա հաճոյ: 17 * Զի ոչ երբէք յարուցեալ է այդպիսի ՚ի վ(երայ) ազգիս մերոյ. եւ ոչ եղեալ է այդպիսի մինչեւ ցայսօր. ոչ յազգի մերում. եւ ոչ ՚ի տոհմի մերում. եւ ոչ ՚ի ժողովրդեան մերում. եւ ոչ ՚ի քաղաքս մեր: ոչ պագին երկիր ձեռագործաց: 18 * Որպէս եղեւ յաւուրսն առաջինս. վ(ասն) որոյ մատնեցան ՚ի սուր եւ ՚ի յափշտակութի(ւն) հարքն մեր. եւ կործանեցան ՚ի կործանումն մեծ առաջի թշնամեաց իւրեանց: 19 * Այլ մեք զայլ Ա՟ծ ոչ գիտացաք բաց ՚ի նմանէ՝ յոր յուսամքն. զի ոչ անտես առնէ զմեզ: 20 * ‖ Եւ ոչ զազգս մեր մատնել այսպէս՝ ո՛ք եւ ուխտեցիք դուք. եւ կամ աւար հարկանել զսրբութիս մեր: Եւ կամ թէ չխնդրիցէ զվրէժ անարգանաց թշնամեաց սրբութեանս. եւ զմահ եղբարցս մերոց. եւ զգերութի(ւն) երկրիս. եւ զաւերումն ժառանգութեանս մերոյ

‖ [illegible] 2. 21. Ել. 4. 6.

դարձուցանէ ՚ի գլուխս մեր յամենայն հեթանոսս. ուր եւ ծառայիցեմք նոցա. եւ եղիցուք յամօթ եւ ՚ի նախատինս առաջի այնոցիկ՝ որոց ստացեալն իցէ զմեզ. զի ոչ ուղղեսցի ծառայութիս մեր նոյ յուրախութի(ւն). այլ յանարգութի(ւն) եւ ՚ի կործանումն նոցա արասցէ զմեզ Տր Ա՟ծ մեր: 21 * Եւ արդ եղբարք՝ ցուցցուք մեք եղբարց մերոց. զի ՚ի մեզ կան կախեալ ոգիք նոցա. եւ սրբութիւնքն՝ եւ սեղանն՝ եւ տաճարն՝ հաստատեալ կայ ՚ի մեզ: Եւ արդ ՚ի վ(երայ) ամենայնի այսորիկ գոհասցուք զԱ՟ծ մերմէ: որ փորձէ զմեզ. ո՛ր եւ զհարս մեր: 22 * ‖ Յիշեցէք՝ որչափ արար ընդ աբրահամու. եւ որպէս ընդ իսահակայ. եւ կամ ընդ յակոբայ ՚ի միջագետս ասորւոց. ՚ի հովուել նորա խաշանցն ղաբանու եղբօր մօր իւրոյ: 23 * ‖ Զի ոչ եթէ ո՛ք զնոսայն փորձեաց առ ՚ի ճանաչել զխորհուրդս սրտից նոցա. եւ զմեր մեզս ոչ խնդրեսցէ. այլ ՚ի խրատել եւ յուսուցանել տանջէ Տր զմերձաւորս իւր: 28 * Եւ ասէ ցնա ոզիա. զա՞մ ինչ զոր ասացերդ՝ ՚ի լրութե(ան) սրտի եւ ՚ի բարւոք մտաց խօսեցար. եւ ոչոք է՝ որ ընդդէմ դառնայ բանից քոց. զի ոչ միայն այսօր յայտնեցաւ իմաստութի(ւն)դ քո. այլ յաւուրցն առաջնոց գիտաց ամ(ենայն) ժողովուրդ զհանճարդ քո. վասն զի բարւոք են ստեղծուածք սրտի քոյ: այլ ժողովուրդս ծարաւեցաւ յոյժ. եւ հարկ եղեւ մեզ առնել՝ ո՛ր եւ խօսեցաք ընդ նոսա. եւ ածել ՚ի վ(երայ) մեր զերդումն. զորով ոչ կարեմք անցանել: 29 * Արդ աղաչեա՛ դու խնդրուածովք զԱ՟ծ. զի կին արդար ես դու. եւ առաքեսցէ Տր զանձրեւ. եւ լցցին գուբքս. եւ ոչ եւս պակասիցուք: 30 * Եւ ասէ ցնո(սա) յուդիթ՝ լուարուք դուք ինձ. եւ արարից ես իրս մի. որ պատմեսցի յազգաց մինչեւ յազգս՝ եւ յորդւոց մինչեւ յորդւոց յորդիս: 32 * Դուք կացջիք առ դրան քաղաքիս զգիշերս զայս. եւ ելից ես նաժշտաւս իմով. եւ յաւուրս յայս՝ յոր ուխտեցիք մատնել զքաղաքս զայս ՚ի ձեռս թշնամեաց մերոց՝ այցելու լիցի Տր ամ(ենայն) ՚ի ձեռն իմ: 33 * ‖ Եւ դուք մի՛ քննէք զգործոն իմ. զոր գործելոցն եմ. քանզի ոչ իսկ ասացից ձեզ. մինչեւ կատարեսցի այն. զոր եսն առնեմ: 34 * Եւ ասէ ոզիա իշխանօքն հանդերձ ցնա. գնա՛ դու ՚ի խաղաղութի(ւն). եւ Տր Ա՟ծ իցի եղիցի ընդ քեզ խնդրել զվրէժ ՚ի թշնամեաց մերոց. եւ նոքա դարձան ՚ի տաղաւարէ անտի յուդիթայ յիւրաքանչիւր տեղի սպահպանութե(ան) պարսպացն:

‖ Ծննդ. 22. 1.

‖ Ծննդ. 28. 7.

‖ [illegible] 10. 8.

Գ Լ:

## ԳԼ: Թ.

1 Եւ անկաւ յուդիթ 'ի վ՛ր երեսաց իւրոց. և 'ի բաց եհան զքուրձն. որ զգեցեալ էր յինքեան. և ցանեաց զմոխիր 'ի վերայ գլխոյ իւրոյ. և էին 'ի նմին ժամու խունկք մատուցեալք երեկորին յեկեղ 'ի տաճարին Տն. և կարդաց նա ձայնիւ մեծաւ առ Տէր Ա՟Ծ. և ասէ յուդիթ. 2 * Տր Ա՟Ծ հօրն իմոյ շմաւոնի. որում ետուր զսուրն 'ի ձեռն խնդրել զվրէժն յայլազգեաց. 3 * Որք լուծին զարգանդ կուսին 'ի պղծութիւն. և մերկացուցին զանդամն 'ի նախատինս. և խայտառակեցին ըզ կուսութիւն 'ի թշնամանս. որք ոչ եղեն հաճոյ առաջի քո. վասն որոյ ետուր իսկ զիշխանս նոցա հանդերձ անկողնօքն. որովք դատապարտեցանն յարիւն. և սատակեցեր զծառայսն հանդերձ տերամբք իւրեանց. և զհարսն 'ի վերայ աթոռոց իւրեանց. և ետուր զկանայս նոցա յաւար. և զդստերս նոցա 'ի գերութիւն. և զամ՟ զաւարն 'ի բաժինս որդւոց սիրելեաց քոց. որք նախանձեցան զնախանձ քո. և զարշանս համարեցան զպղծութիւն քեռն իւրեանց. և կարդացին զքեզ յօգնականութիւն. և արդ Տր Ա՟Ծ իմ, լո՛ւր ձայնի աղախնոյ քոյ. և նայեա՛ց 'ի խնդրուածս այրւոյս. 4 * Զի դու արարեր զայն յառաջ քան նոսա. և յետ այնորիկ. և այժմ. և որ գալոց է՝ զայն դու խորհեցար. և եղև, ո՛րպէս և կամեցար. և յանդիման եղեն քեզ՝ որպէս և խորհեցարն. 5 * Եւ ասացին, ահաւասիկ մեք. զի ամ՟ ճանապարհք քո պատրաստք են. և դատաստանք կանխագէտք են. 6 * Զի ահաւասիկ ասորեստանեայն ելին զօրօք իւրովք զերկիրս. և բարձրացան հեծելօք երիվարացն. և հպարտացեալ մեծամտեցաւ 'ի բազուկ հետևակացն բազմութեան. և յուսացան 'ի նիզակս և 'ի սպառազինութիւս. և 'ի կորովս աղեղնաւորացն և պարսաւորացն. և ոչ գիտացին Տր. եթէ դու ես՝ որ խորտակես զպատերազմունս. և Տր է անուն քո. փրկեա՛ զմեզ 'ի նեղութենէս. 11 * Եւ ցրուեա՛ զզօրութիւս նց Տր ամենակալ. և խորտակեա՛ և ընկեա՛ զզօրութիւս նց բարկութբ քով. զի կամեցան պղծել զսրբութիւս քո. և զյարկս անուան բնակութեան փառաց քոց. և կործանել երկաթով զեղջիւրս սեղանոյ սրբոյ քոյ. 12 * Նայեա՛ց, և տես զամբարտաւանութիւս նոցա. և առաքեա՛ զբարկութիւս քո 'ի վերայ գլխոց նց. և տո՛ւր ձեռն աղախնոյ քոյ. և այրւոյս զօրութիւն. 15 զոր խորհեցայ առնել. * Եւ հա՛ր՝ և կործանեա՛ զծառայն խաբանօք շրթանց իմոց՝ և զիշխանն ծառայիւք իւրովք. և խորտակեա՛ զսաստկութն նց 'ի ձեռն կնոջս. 16 * Զի ոչ եթէ 'ի բազմութեան է քո զօրութիւն. և ոչ կարգդ քո յախս է, որք հզօրքն են. այլ խոնարհաց ես Տր Ա՟Ծ. և կարօտելոց ես օգնական. տկարաց ես ընդունելութիւն. կարօտելոց ես խնդրակ. անյուսաց ես փրկիչ. 17 * Այո Ա՟Ծ հօրն իմոյ. և Ա՟Ծ ժառանգութեան իւի. Տր երկնից և երկրի. արարիչ ջուրց. թագաւոր ամ՟ ստացուածոց քոց՝ դու ես. 18 * Լո՛ւր աղօթից աղախնոյ քոյ. տո՛ւր ինձ բանս՝ զի խօսեցայց զնոսա 'ի կործանումն նոցին, որք եկեալք են 'ի վ՛ր կտակարանաց քոց. և 'ի վ՛ր տան քոյ՝ և բարձունս սիոնի. և 'ի վերայ բնակութեան որդւոց քոց. զի խորհեցան զխորհուրդս խիստս. 19 * Եւ ծանո՛ ըզ բարձր բազուկ քո ժառանգութեան քոյ. եթէ դու ես Ա՟Ծ. որ տիրես ամենայն զօրութեանց և իշխանութեանց. զի ոչ ոք է. որ պաշտպան լինի ազգիս իսրայէլի բաց 'ի քէն Տր.

Margin: Ծնն. 34.25. — Դատաւ. 4.21. և 5.26. — Դատաւ. 7. 2. — 2. Մնաց. 14. 11. և 16.8. և 20.6. — և 'ի հլ՟ բարձանց

## ԳԼ: Ժ.

1 Եւ իբրև դադարեաց յուդիթ յաղօթից իւրոց. և կատարեաց ըզ բանս զայս. և յոտն եկաց յերեսացն 2 խոնարհելոյ. * Եւ կոչեաց զնաժիշտն իւր. և էջ 'ի տուն իւրնա. ուր կատարէր զաւուրս շաբաթուցն՝ և զաւուրս 3 տօնիցն. * Եւ մերկացաւ յիւրմէ ըզ քուրձն. զոր զգեցեալ էր. և 'ի բաց եհան զհանդերձ այրութեան իւրոյ. և լուա՛ց զմարմինս իւր ջրով. և օծաւ իւղով անուշիւ. և եհիւս զհեր գլխոյ իւրոյ. և կապեաց զապարօշն 'ի ճակատ իւր. և զգեցաւ զհանդերձ ուրախութեան իւրոյ. զոր զգենոյր առ կենդանութբ առն իւրոյ մանասէի. 4 * Եւ ագանէր կօշիկս ոսկեզօծս. և արկանէր ապարանջանս 'ի ձեռս իւր. և արկանէր քայլս յականց պատուականաց ընդելուզեալս մարգարտով 'ի պարանոց իւր. և մատանիս 'ի մատունս իւր. և զգործապարհանգս 'ի գլուխ իւր. և յօրինիւր՝ և կազմիւր ամ՟ զարդու իւրով. և պայծառանայր առաւել յոյժ. առ 'ի խաբել՝ և պատրել զամենեսին 'ի գեղ երեսաց իւրոյ. որք տեսանիցենն զնա. 5 * Եւ ետ ցաղախինն զմախաղ իւր. և ելից զնա փոխնդով. և պաղատակօք և հացիւք սրբօք. և զհաղաղակն գինւոյ. և զոր

ուռակն իւղոյ . և օրհնէր և կոչմէր զա՟մ
ըստ օրինի իւրեանց . և տայր ցաղա_
խինն իւր : 6 *Եւ ելին նոքա ընդ դուռն
քաղաքին բետիղուայ . և տեսին անդ
զօզիայ . զի կայր առ դրանն՝ և զայլ
քահանայս քաղաքին ընդ նմա . և ըզ
քաբրին . և զքարմին : 7 *Եւ իբրև տե_
սին նոքա զյուդիթ . զի էր փոխեալ
զդեղ երեսաց իւրոց՝ և զզգեստ համ_
դերձին նր՟ . և զարմացան նոքա ընդ
գեղ նորա յոյժ : 8 *‖Եւ ասեն ցնա . Ա՟Ծ
հարցն մերոց տացէ քեզ շնորհս . և
կատարեսցէ զկամս սրտի քո 'ի ցն_
ծութիւն և յուրախութիւն որդւոցն Իղի .
և 'ի պարծութիւն Եմի . և երկիր պագին
Ա՟Յ : 9 *Եւ ասէ ցնոսա յուդիթ . հրա
մայեցէք ինձ բանալ զդրունս քաղա
քիս . զի ելից ես կատարել զբանս . զոր
խօսեցայք ընդ իս : և հրամայեցին
դռնապանացն բանալ . որպէս և խօ_
սեցան՝ և արարին այնպէս : 10 *Եւ ել
յուդիթ՝ ինքն , և աղախինն իւր ընդ
նմա . և մինչ դնէին նմա արք քաղա_
քին յերթալն նր՟ . մինչև եղև նա ընդ
լերամբն . մինչև էանց նա ընդ ծոր_
ծորն հովտին . և ապա ոչ ևս տեսին
զնա : 11 *Եւ երթային նոքա ընդ ծոր_
ծոր հովտին ուղիղ ընդ ճանապարհն .
և պատահեցան նմ՟ պահապանքն ա_
սորեստանեայց : 12 *Եւ կալան զնոսա .
հարցին՝ և ասեն . ո՞յր ես դու . և կամ
ուստի՞ գաս . կամ յո՞ երթաս : և ասէ
ցնոսա յուդիթ . դուստր եմ ես եբրայ
եցւոց . և փախուցեալ եմ ես յերե_
սաց նց՟ . զի մատնելոց են նոքա 'ի կե
րակուր ձեզ : 13 *Եւ ես եկի կալ առաջի
հողոփեռնեայ իշխանի զօրաց ձերոց ,
պատմել նմա զբանս ճշմարտութեան . և
ցուցանել նմա զճանապարհն՝ ընդ որ
գնայցէ . և տիրեսցէ ամենայն լեռ_
նային կողմանցն . և ոչ միում ումեք լի
ցի վնաս 'ի զօրաց դորա : 14 *Եւ իբրև
լուան արքն զբանս յուդիթայ . և նայե
ցան ընդ երեսս նր՟ . և էր առաջի նց՟
գեղեցկութիւն յոյժ . և ասեն ցնա :
15 *Ապրեցուցեր դու զանձն քո այսօր .
արդ փութա՛ դու իջանել , և տեսա_
նել զերեսս տեառն մերոյ . և մատի_
ցես դու 'ի խորանն նր՟ մեօք հանդերձ .
և տացուք զքեզ 'ի ձեռս նորա : 16 *Եւ
յորժամ կացցես առաջի նորա , մի՛
երկնչիցիս 'ի սրտի քում . այլ պատմես
ցես դու նմա ըստ բանից այդոցիկ .
և բարի արասցէ քեզ . և ընտրեցին
իւրեանց արս հարիւր . և յղեցին ընդ
նմա . և ածին զնա 'ի խորանն հողո_
փեռնեայ՝ և պատմեցին զգեղեցկու
ան 'ի չքաւ նր՟ . և զգալն ա՟մ բանակին . և գային

‖ Սէր. 8.33.

'ի տեսանել զնա , մինչ դեռ կայր ար_
տաքոյ խորանին հողոփեռնեայ . մինչ
դեռ պատմէին հողոփեռնեայ : 17 *Եւ
զարմանային յոյժ ընդ գեղեցկութիւն
նորա . և ընդ ամենայն որդւոցն Իղի :
18 *Եւ ասէին այր ցընկեր իւր . իսկ արդ
ո՞ կարէ չար ինչ խորհել 'ի վր՟ ազգիս
այսորիկ . որք ունին զայդպիսի գե_
ղեցկութիւն կանայք . արդ ո՛չ պարտին
ապրել արք նց՟ . զի եղիցին դաւերք
նոցա մեզ կնութեան . զի եթէ ապրին ,
վնաս են նոքա ա՟մ երկրի : և ելին սպա
սաւորքն հողոփեռնեայ՝ և ամենայն
ծառայք նորա . և տարան զնա 'ի խո_
րանն : 19 *Եւ հողոփեռնէս նստէր 'ի
դահոյսն իւր . և էր փակեալ զնա վա_
րագուրօք շուրջանակի . զորս էր ընդ
ելուզեալ ոսկւով և մարգարտով՝ և
ակամբք պատուականօք : և իբրև լո՛
ւ նա զյուդիթայ , ել նա արտաքս
'ի սրահ խորանին ջահիւք և լապտե_
րօք արծաթեղինօք . քանզի գիշեր էր
20 *Եւ իբրև ետես զնա հողոփեռնէս .
զարմացաւ ընդ տեսիլ գեղոյ նր՟ . և
անկեալ 'ի խոնարհ երկիր պագանէր
յուդիթ հողոփեռնեայ . և կանգնե_
ցին զնա ծառայք նորա :

## ԳԼ: ԺԴ:

1 Եւ ասէ ցնա հողոփեռնէս . համար
ձակեաց կին դու . և մի՛ երկնչիր .
զի ես ոչ չարչարեմ զմարդ . որ կամի
ծառայել նաբուգոդոնոսորայ ար_
քայի . որ տիրէ ա՟մ երկրիս : 2 *Եւ
արդ՝ ժողովուրդ քո այդ՝ որ բնակեալդ
է 'ի լեռնակողմանդ . եթէ ոչ էր ապս
տամբեալ դոցա յինէն . ոչ էր իմ ա_
ռեալ զնիզակ 'ի վր՟ դոցա . այլ դոքա
ինքեանք արարին անձանց իւրեանց
զայս : 3 *Արդ՝ ասա դու ինձ . վս՟ որոյ
ես դու փախուցեալ 'ի նոցանէն . և
եկեալ ես առ մեզ . քաջալերեաց , զի
'ի փրկութիւն եկեալ ես . զի կենդանի
ես 'ի գիշերիս յայսմիկ . և զա՟մ աւուրս
քո . և ոչոք է՝ որ վնասէ քեզ . այլ բա_
րի լիցի քեզ . որպէս և լինի ծառայից
տեառն իմոյ նաբուգոդոնոսորայ :
4 *Եւ ասէ ցնա յուդիթ . ընկալ զբանս
աղախնոյ քո . և խօսեսցի աղախին քո
առաջի քո . և ոչ ինչ ստութիւն պատմէ
տեառն իմում՝ 'ի գիշերիս յայսմիկ .
եթէ զհետ եկեսցես , և լուիցես բա_
նից աղախնոյ քո , գործ կատարեալ
գործէ ընդ քեզ Ա՟Ծ . և ոչ անկցի բան
քո ընդունայն : 5 *Ոչ կենդանի է նա_
բուգոդոնոսոր արքայ ա՟մ երկրի . և
կենդանի է զօրութիւն նորա . որ առա_
քեացն զքեզ յուղղութիւն ա՟մ մարդոյ .
զի

զի ոչ եթէ մարդիկք միայն ծառայեն նմա 'ի ձեռն քո • այլ և գազանք վայ_րի, և անասունք, և թռչունք երկնից քև կեցցեն • Նաբուգոդոնոսոր և ա̅մ տուն նորա ։ 6 *Վասն զի լուաք զիմաս տութի̅ն և զհանճար անձին քոյ • որ և պատմեալ իսկ է յա̅մ երկրի • զի դու միայն ես բարերար յա̅մ թագաւորու թե̅ նր̅ • և հզօր ես բանիւք • և սքան չելի ես 'ի մէջ պատերազմօղ զօրացս ։

‖ Յես. 5. 5.

7 *Արդ զբանն՝ զոր խօսեցաւ աքիոր 'ի խորհրդեան սենեկի քում, լուաք և մեք • և զի խնայեցին 'ի նա արք բետիղուայ • և նա պատմեաց զա̅մ • որպէս և խօսեցաւ ընդ քեզ • և արդ այժմ տէր՝ մի անցանէր զբանիւք նր̅ • այլ հաստատեա զնոսա 'ի սրտի քում • քանզի ճշմարիտք են ։ 8 *Զի ոչոք կա_րէ չարչարել զազգս մեր • և ոչ սուր թշնամւոյ փասէ մեզ • բայց յորժամ մեղանչիցեն Ա̅յ իւրեանց ։ 9 *Եւ արդ մի փնասիցիս տէր իմ դու և զօրք քո • քանզի հասեալ իսկ է ժամանակ մա հուն նոցա՝ վ̅ս մեղաց • զորս մեղան Ա̅յ իւրեանց • քանզի արարին նոքա մեղս մեծ անօրէնութե̅ ։ 10 *Զի պա_կասեցան նոցա ջուրք և կերակուրք ։ 11 *Խորհեցան նոքա՝ և արկին զձեռս իւրեանց յանասունս • զոր ոչ էր հրա մայեալ ուտել Ա̅յն իւրեանց ։

12 *Եւ զպտուղ ցորենոյ՝ և զտասա_նորդս գինւոյ և իւղոյ • զոր էր սրբեալ քահանայից • որք պաշտօնեայքն են յեհէմ առաջի Ա̅յն մերոյ • սկսան ու տել զայն • զոր ոչ էր օրէն ուտել ն̅ց՝ բայց միայն քահանայից • և առաքե ցին յեհէմ • զի որք անդ իցեն՝ արաս_ցեն այսպէս • վ̅ս որոյ լինէր ն̅ց թո_ղութի̅ յԱ̅յ 'ի ձեռն քահանայից • և արդ՝ յորժամ արարին զայս մեղս • մատնին 'ի սատակումն ։ 13 *Արդ ես ա_ղախին քո • յորժամ գիտացի զայս՝ փա խեայ 'ի նոցանէն • և առաքեաց զիս Տր̅ առնել ընդ քեզ գործ մեծ • զորմէ զարմասցի ա̅մ երկիրս • որք միանգամ լուիցեն զայն ։ 14 *Զի աղախին քո ա̅ծ_ապաշտ է • և աղաչեմ զցայգ և զցե_րեկ զՏր̅ Ա̅ծ երկնից • և արդ մնացից ես առ քեզ տէր իմ • և ելցէ աղախին քո 'ի գիշերի յայսմիկ 'ի ծործորն հովտին • և կացից յաղօթս առ Տէր Ա̅ծ իմ • և պատմէ ինձ՝ յորժամ մե_ղանչեն նմա ։ 17 *Եւ ես գամ • և պատ_մեմ քեզ • և դու ելցես ամենայն զօ_րօք քովք հանդերձ • և ոչ իցէ 'ի նոցա նէ՝ որ ապրիցի 'ի քէն • և տարայց ըզ քեզ ընդ մէջ հրէաստանի • մինչև տա րայց զքեզ յերուսաղէմ • և արկցես զաթոռ քո 'ի միջի նորա • և ժողովես ցես զնոսա իբրև զհօտ՝ որոյ ոչ գուցէ հովիւ • և ոչ հաչեսցէ շուն մի լեզու աւ իւրով ընդդէմ քո • և ինձ պատ_մեցաւ այս լինիլ յԱ̅յ՝ և եկի ցուցա_նել քեզ ։ 18 *Եւ հաճոյ թուեցան բանք նորա առաջի հողոփեռնեայ՝ և առա_ջի ամենայն ծառայից նորա • և զար_մանային ը̅ իմաստութե̅ն ն̅ր • և ասէ_ին ։ 19 *Ոչ գտանի կին գեղեցիկ համե մատ սմա • 'ի ծագաց երկրի մինչև 'ի ծագս, իմաստութե̅ բանիւք, և գե_ղեցկութե̅ երեսաց իւրոց ։ 20 *Եւ ասէ ցնա հողոփեռնէս • բարի արար Ա̅ծ զի առաքեաց զքեզ առաջնորդել ժո_ղովրդեանս • զի լիցի հզօրացեալ տէ_րութի̅ս մեր • և որք ապստամբեցանն 'ի մէնջ, կորիցեն • և արդ տեսանեմ զքեզ կայտառ տեսլեամբ • և բարի զա̅մ բանս քո ։ 21 *Զի թէ արասցես որպէս խօսեցարն, Ա̅ծն քո եղիցի նաև իմ Ա̅ծ • և դու 'ի տան նաբուգոդո_նոսորայ նստցիս • և եղիցիս անուանի քան զա̅մ երկիր ։

ըն̅դ ա̅ջ

## ԳԼ: ԺԲ:

1 Եւ հրամայեաց տանիլ զնա 'ի տուն գանձին • և հրամայեաց նմ̅ ու_տելիս յիւրոց խորտկացն • և 'ի գինւոյ անտի՝ զոր ինքն ըմպէր ։ 2 *Եւ ասէ յու դիթ • ոչ կերայց ես 'ի դոցանէն ‖ զի մի լինիցին ինձ 'ի գայթագղութի̅ • այլ տացես ինձ հրաման ուտել ինձ անտի • զոր բերի 'ի քաղաքէ անտի ։ 3 *Եւ ասէ ցնա հողոփեռնէս • եթէ պակա սեսցի այն • ուստի տացուք քեզ նման նոցա • զի ոչոք է ընդ մեզ յազգէդ քումմէ ։ 4 *Եւ ասէ ցնա յուդիթ • կեն դանի է անձն քո՝ տէր իմ ։ եթէ ոչ ծա_խէ աղախին քո զկերակուրս • որ եկեալ է ընդ իս • մինչև արասցէ 'ի ձեռն իմ, զորև խօսեցաւն ։ և ածին զնա ծա_ռայքն հողոփեռնեայ 'ի խորան անդր • և ննջեաց նա անդ մինչև 'ի մէջ գիշեր • և յարեաւ յուդիթ յառաւօտուն պա հու ։ 5 *Եւ առաքեաց առ հողոփեռ_նէս՝ և ասէ • հրամայեսցէ տէր իմ թո ղուլ զաղախին իւր ելանել կալ յա_ղօթս ։ 6 *Եւ հրամայեաց հողոփեռնէս պահապանացն մի արգելուլ զնա • և եղև նա 'ի բանակի անդ աւուրս ե_րիս ։ 7 *Եւ ելանէր նա 'ի գիշերին 'ի ձորն բետիղուայ • և մկրտիւր նա 'ի բա նակի անդ յաղբերս ջուրցն • ըստ օրի նի հրէիցն ։ 8 *Եւ իբրև մկրտիւր • կայր յաղօթս առ Տր̅ Ա̅ծ իւր • զի յաջո_ղեսցէ զճանապարհս ն̅ր 'ի փրկութի̅ որդւոց ժողովրդեան իւրոյ ։ 9 *Եւ նա

‖ Ծննդ. 43. 32. Դան. 1. 8. Տօբիթ. 1. 12.

արասցէ Ա̅ծ

մտանէր սրբեալ · եւ լինիւր 'ի խորա_
նին · մինչեւ առնոյր եւ տանէր զկեր կե_
րակուրն առ ինքն ընդ երեկոյս : * Եւ 10
եղեւ յաւուրն չորրորդի՝ արար Հողո_
փեռնէս կոչունս ծառայից իւրոց
միայն · եւ կոչեաց 'ի կոչունսն եւ ոչ զմի
ոք յատարաց անտի : եւ ասէ ցբագու
ցներքինին իւր · որ էր հազարապետ
հաւատարիմ 'ի վերայ ամենայն ըն_
չից նորա · երթ՝ հաւանեցո դու ասէ
զկինն հեբրայեցի՝ որ է առ քեզ՝ ու_
տել եւ ըմպել ընդ մեզ : * Եւ զինչ է 11
այդ այպն կատականաց · թողուլ մեզ
զայդպիսի կին · եւ ոչ ընդնա խօսիլ ընդ
նմա · արդ՝ եթէ ոչ ածցուք զմարդդ՝
եւ մերձեցուսցուք առ մեզ · գուցէ
ծաղր ինչ առնիցէ զմեզ : * Եւ ել բա_ 12
գու յերեսաց Հողոփեռնեայ · եւ եմուտ
առ նա՝ եւ ասէ ցնա · մի՛ դանդաղեսցի
աղախինդ գեղեցիկ գալ առ տէր իմ,
եւ փառաւորիլ 'ի նմանէ · եւ ըմպել ընդ
նմա զգինի ուրախութե մեօք հան_
դերձ · եւ եղիցիս դու այսօր իբրեւ ըզ
դուստր մի յորդւոց ասուրայ · որք կան
'ի սպասու նաբուգոդոնոսորայ ար_
քայի : * Եւ ասէ ցնա յուդիթ · եւ ո՞վ 13
ոք եմ ես · որ ընդդէմ դառնամ
տն իմում : * Զի զամենայն ինչ՝ որ 14
հաճոյ է առաջի աչաց քոց՝ փութա_
լով առնեմ · եւ եղիցի ինձ 'ի ցնծու_
թի մինչեւ յօր մահու իմոյ : * Եւ յա_ 15
րեաւ՝ զարդարեցաւ զարդու իւրով՝
ըստ զարդու կանանց · եւ մատեաւ նա
ժիչտն իւր · եւ էարկ նմա բազմական
'ի գետնի դէմ յանդիման Հողոփեռ_
նեայ զակումբն մաշկեայ · զոր էառ
նա 'ի բագուեայ 'ի հանապազորդ սպասու
նմա · եւ բազմեցաւ յուդիթ 'ի վր նր :
* Եւ յիմարեցաւ Հողոփեռնէս 'ի գութ_ 16
երեսաց նորա · եւ էր 'ի ցանկութե մե_
ծի՝ լինել ընդ նմա · եւ խնդրէր Հողո_
փեռնէս խաբել զնա՝ յօրէ յայնմանէ
յորմէ ետես զնա : * Եւ ասէ ցնա Հո_ 17
ղոփեռնէս · արբ դու · եւ լեր առ մեզ
ուրախ : * Եւ ասէ յուդիթ · այո՛ տէր · 18
զի մեծացան կեանք իմ յիս այսօր · քան
զամ աւուրս 'ի ծննդենէ իմմէ :
* Եւ էառ՝ եկեր՝ եւ էարբ առաջի նո_
րա · զոր պատրաստեաց նմա աղա_
խինն իւր : * Եւ ուրախ եղեւ Հողոփեռ_ 19
նէս 'ի վերայ նորա · եւ էարբ նա գինի
աստիկ յոյժ · որչափ ոչ էր արբեալ
նորա այնչափ յաւուրս իւրում, յօրէ
ծննդենէ իւրմէ :

## Գլ: ԺԳ:

Եւ իբրեւ երեկոյ եղեւ · փութա_ 1
ցոյց զծառայսն իւր գնալ ար_
տաքս · եւ բագու փակեաց զդուրս խո_
րանին · եւ գնացին նոքա յիւրաքանչիւր
անկողինս իւրեանց արտաքոյ քան ըզ
2 խորանն : * ‖ Քանզի էին ամենեքեան ‖ Սիրաք. 31. 30.
խոնջք եւ վաստակք 'ի բազում գինէր
3 բուճայ անտի : * Եւ մնացին յուդիթ
եւ Հողոփեռնէս միայն 'ի խորանին :
4 * Եւ Հողոփեռնէս մտեալ 'ի գահոյսն
իւր · եւ 'ի քուն եղեւ · եւ էր թմբրեալ
5 յոյժ 'ի գինւոյ անտի : * Եւ ասէ յու_
դիթ ցաղախին իւր, զի կացցէ արտա_
քոյ խորանին՝ եւ սպասեսցէ նմա՝ յոր_
ժամ ելանիցէ արտաքս · որպ եւ յայլ ա_
ւուրսն · զի ասաց նմա · եթէ երթամ
կալ յաղօթս ըստ սովորութեն · եւ ը
բագուայ խօսեցաւ ըստ բանիցս այսո_
6 ցիկ : * Եւ գնացին ամենեքեան 'ի սե_
նեկէ անտի · եւ ոչոք մնաց ամենեւին
անդ : եւ եկաց յուդիթ առ գահոյսն
նր՝ եւ ասէ · Տր Ած զօրութեց, նայեաց
'ի ժամուս յայսմիկ 'ի գործս ձեռաց
7 իմոց՝ եւ 'ի բարձրութի Երմի : * Զի
այժմ է ժամանակ այց առնել քեզ ժա_
ռանգութե քում · եւ առնել զգործս
զայս 'ի ձեռս իմ, 'ի սատակումն թշնա_
մեաց մերոց · որք յարուցեալք են 'ի
8 վր մեր : * Եւ մատեաւ առ քանուն
գահոյիցն · որ էր ընդ սնարսն Հողո_
փեռնեայ · եւ էհան զդաշոյն նր յազդե_
9 րէն նորա : * Եւ կալաւ զհերաց նր եւ
ասէ · զօրացո զիս Ած Իլի յաւուրս
10 յայսմիկ : * ‖ Եւ էհար 'ի պարանոցի ‖ 1 Թագ. 17. 51.
նր երկիցս զօրութբ իւրով · եւ հատէ_
11 եբարձ զգլուխ նր : * Եւ թաւալեցոյց 1. ‖ Մակ. 7. 47.
եւ ընկէց զմարմին նր 'ի գահոյից ան_
տի : եւ յետ ժամու միոյ ել՝ եւ ետ նաժշ_
տին իւրոյ զգլուխն Հողոփեռնեայ :
12 * Եւ ընկէց 'ի մախաղ կերակրոյն իւ_
րոյ · եւ ելին երկոքին 'ի միասին ըստ սո_
վորութեն իւրեանց · եւ անցին նոքա
ըստ բանակն · եւ շրջեցան՝ եւ եկին ընդ
ձորն · եւ ելին նոքա 'ի լեառն բետիղու_
13 այ : * Եւ եկին նոքա 'ի դրունս քա_ ‖ Մակ. 15. 35.
ղաքին : եւ ասէ յուդիթ 'ի հեռաստա_
նէ ցպահապանս դրանցն · բացէք՝ բա_
ցէք արդ զդրունսդ · զի ընդ մեզ է Տր
Ած մեր · արասցէ եւս զօրութիւ յԻլի ·
եւ 'ի բեկումն թշնամեաց մերոց · որպ եւ
14 արար այսօր : * Եւ եղեւ՝ իբրեւ լուան
արք քաղաքին նորա զձայն նր , փու_
թացան իջանել 'ի դրունս քաղաքին
իւրեանց · եւ կարդացին նոքա զքահա_
15 նայսն՝ եւ զծերս ժողովրդեանն : * Եւ
ժողովեցան 'ի փոքուէ մինչեւ 'ի մեծա
մեծս · քանզի զարմացեալ էին նոքա
յոյժ ընդ գալն նր : եւ բացին զդուռն
քաղաքին · եւ առին զնոսա 'ի ներքս :
16 * Եւ լուցին զլապտերս իւրեանց · եւ
կա_

կացին շուրջ զնովաւ: *Եւ ասէ յու- 17
դիթ՝ բարձրաձայն բարբառով. որ-
դիք Ի՟լի, օրհնեցէք զԱ՟ծ: *Որ ոչ մեր- 18
ժեաց զողորմութիւն իւր 'ի տանէս Ի՟լի.
այլ եհար՝ և վանեաց զթշնամիս մեր
'ի ձեռն իմ 'ի գիշերիս յայսմիկ: *Եւ 19
եհան զգլուխն 'ի մախաղէն՝ և եցոյց
նոցա: և ասէ ցնոսա. ահաւասիկ գլուխն
Հողոփեռնեայ զօրագլխի զօրացն ա-
սորւոց. և ահա վարագոյրքն պատուա-
կանք՝ ընդ որովք անկեալ դնիւր յար-
բեցութեան իւրում: և սատակեաց զնա
Տ՟ր Ա՟ծ 'ի ձեռն կնոջս: *Կենդանի է 20
Տ՟ր. որ պահեաց զիս 'ի ճանապար-
հին յայնմիկ՝ յորում գնացի. զի խա-
բեաց զնա տեսիլ երեսաց իմոց 'ի կո-
րուստ նմին. և ոչ արար նա ընդ իս պղ-
ծութիւն 'ի նախատինս անձին իմոյ:
*Եւ զոհացան ամ՟ ժողովուրդքն. և 22
խոնարհեալ երկիրպագին Ա՟յ. և ա-
սեն միաձայն ամենեքին. օրհնեալ ես
դու Տ՟ր Ա՟ծ մեր. որ յամօթ արարեր
այսօր զթշնամիս ժողովրդեան քոյ:
*Եւ ասէ Ոզիա ցյուդիթ. օրհնեալ 23
ես դու դուստր յԱ՟յ բարձրելոյ՝ քան
զամ՟ կանայս 'ի վ՟ր երկրի: *Եւ օրհ- 24
նեալ Տ՟ր Ա՟ծ որ արար զերկինս և զեր-
կիր. որ յաջողեաց քեզ 'ի վ՟ր գլխոյ
իշխանին այդորիկ թշնամւոյ մերոյ:
*Զի ոչ պակասեսցի անուն քո 'ի 25
մարդկանէ, առ 'ի յիշելոյ զքեզ առա-
ջի Ա՟յ մինչև յաւիտեան. և արասցէ
զքեզ Տ՟ր Ա՟ծ 'ի բարձրութիւն անձին
քոյ. և այցելու լիցի քեզ 'ի բարիս.
փոխանակ զի ոչ խնայեցեր դու յանձն
քո վ՟ս տառապանաց ազգի մերում.
այլ խնդրեցեր դու զվրէժ կործա-
ման հարուածոյս մերոյ. գնացեալ քո
ուղիղ զճանապարհս առաջի Տ՟ն մե-
րոյ: *Եւ ասէ ամենայն ժողովուրդն՝ 26
եղիցի եղիցի:

## ԳԼ: ԺԴ:

‖ 2. Մակ. 15. 35.

Եւ ասէ յուդիթ ցնոսա. ‖ Լուարո՛ւք 1
դուք ինձ եղբարք՝ զոր ասեմս
ձեզ. և առէք զգլուխս զայս. և կախե-
ցէք զսա առաջի մահարձանաց պարս-
պաց քաղաքիս: *Եւ եղիցի յորժամ 2
մերկասցի առաւօտն. և ծագեսցի ա-
րեգակն յերկիր. վառեցարո՛ւք ամ՟
արք զօրաւորք պատերազմի. և կացու-
ցանիցէք 'ի վերայ ձեր զօրավարս. և
ելանիցէք արտաքոյ քաղաքիս. իբրև
թէ իջանիցէք 'ի դաշտ անդր. 'ի թև-
մի պարսկապանաց որդւոցն ասուր.
և անդր մի իջանիցէք: *Ա՟յլ խուով 3
հարկանիցէք նոցա. և նոքա առցեն
զզէնս իւրեանց. և գնասցեն 'ի բուն
բանակն իւրեանց. և յարուցանիցեն
զզօրագլուխն ասուր. և ժողովեալք
դիմեսցեն 'ի խորանն Հողոփեռնեայ.
4 և զնա ոչ գտանիցեն: *Եւ անկանի-
ցի 'ի վ՟ր ն՟ց ահ. և 'ի փախուստ դարձ-
5 ցին նոքա յերեսաց ձերոց: *Եւ դուք
զկնի մտեալ՝ և ամ՟ բնակիչք սահմա-
նացս Ի՟լի տապաստ արկեալ վանիջիք
զնոսա յամ՟ ճանապարհս ն՟ց: և արդ
մինչև արարեալ զայս, կոչեցէք առ իս
զաքիոր ամոնացի. զի տեսցէ զայս. որ
ընդ ոտն եհար զտունս Ի՟լի. որ կա-
պեացն զնա. և ետ ածել այսր 'ի մահ:
Եւ կարդացին զաքիովր 'ի տանէ Ոզիայ.
և իբրև եկն՝ ետես նա զգլուխն Հողո-
փեռնեայ 'ի ձեռին առն միոջ 'ի ժողո-
վրդեանն. անկաւ 'ի վերայ երեսաց
իւրոց՝ և թա՛ւալեցաւ: և իբրև անդէն
զօրացաւ. անկեալ առ ոտս յուդթայ
երկիր եպագ նմա՝ և ասէ. օրհնեալ
ես դու յամ՟ բնակութիւնս յուդայ. և
ընդ ազգս ամ՟. ուր և լուիցեն զանուն
քո՝ զարմասցին: և արդ պատմեա՛ դու
ինձ. զի՞նչ արարեր յաւուր յայսմիկ: և
պատմեաց նմա յուդիթ առաջի ամ՟
ժողովրդեանն իւրոյ՝ զոր էր ն՟ր արա-
րեալ յօրէ յայնմանէ. յորում ելն նա
մինչև ցայնժամ: և իբրև դադարեաց
յուդիթ 'ի խօսից իւրոց, աղաղա-
կեաց ժողովուրդն մեծաձայն փա-
ռաւորել զԱ՟ծ 'ի քաղաքին իւրեանց:
6 *Եւ իբրև ետես աքիովր զայն ամ՟,
զոր արար Ա՟ծն Ի՟լի, հաւատաց յԱ՟ծ
ամ՟ սրտիւ՛ իւրով. և թլփատիւր 'ի
մարմին անթլփատութեան իւրոյ. և յաւե-
լաւ նա 'ի տունն Ի՟լի մինչև ցայսօր:
7 *Եւ յորժամ ծագեցաւ առաւօտն.
կախեցին զգլուխն Հողոփեռնեայ 'ի
պարսպէ անտի. և վառեցաւ ամ՟ այր
'ի զէն իւր. և ելին նոքա առնել զայն
ընդ անցս կողմանն 'ի վերայ լերինն.
և որդիքն ասուր իբրև տեսին զնոսա,
ազդ արարին նոքա առ առաջնորդս
իւրեանց. և եկին ն՟ք առ զօրագլուխս՝
և առ իշխանս՝ և առ հազարապետս
8 ն՟ց: *Եւ դիմեցին նոքա 'ի խորանն
Հողոփեռնեայ. և ասեն ցսենեկա-
պետն ն՟ր. արդ մո՛ւտ. և յարո՛ զտէրդ
մեր. զի իշխեցին ծառայքն 'ի վ՟ր մեր
'ի պատերազմ. զի սատակեսցուք զն՟ս
13 իսպառ: *Եւ եմուտ բագու՝ և բաղ-
խեաց զդուրս սենեկին. քանզի կար-
ծէր եթէ 'ի քուն իցէ հանդերձ յուդ-
14 թաւ: *Իբրև ոչոք ետ նմա պատաս-
խանի. քաջալերեալ եմուտ 'ի ներքս
'ի սենեակն. և ետես զի անկեալ կայր
'ի վերայ գետնոյն մերկ. և գլուխ իւր
բարձեալ էր 'ի նմանէն. և գոչեաց
բա-

թագու ձայնիւ մեծաւ. և լալով և
ողբմամբ մեծաւ յոյժ. և պատառեաց
նա զպատմուճանն իւր: *Եւ եմուտ 15
նա 'ի սենեակն յուդթայ՝ և ոչ եգիտ
զնա. և ել՝ և ընթացաւ նա առ իւրսն.
և ասէ: *Ապստամբեցան ծառայքն. 16
զի արար ամօթ նախատանաց կին մի
հեբրայեցի տանն արքային նաբուգո-
դոնոսորայ. զի ահաւասիկ հողոփեռ-
նէս յերկիր կործանեալ. և գլուխ իւր
չէ առ նմա. *Եւ իբրև լուան զայն 17
բանս իշխանք զօրացն ասուրայ, պա-
տառեցին ամենեքեան զպատմուճանս
իւրեանց. և երկեան յոյժ: *Եւ գոչե 18
ցին նոքա 'ի մէջ բանակին:

## ԳԼ: ԺԵ:

Եւ իբրև լուան, որք 'ի վրանսն էին. 1
յիմարեցան վն իրացն՝ որք եղեն:
*Եւ անկաւ 'ի վր նոցա ահ և դողումն 2
յոյժ. և ապա ոչ մնացին ամենեւին այր
ընկերի իւրում: *Եւ հեղեալք՝ զբա 3
ղեալք՝ առ հասարակ 'ի փախուստ դար-
ձան 'ի դաշտակողմանն և 'ի լեռնա-
կողմանն: *Շուրջ զբետիղուայ. և 4
դարձեալ անտի փախստեայք լինէին.
և ապա ամենայն այր պատերազմող
որդւոցն իղի յարձակեցան 'ի վր նոցա:
*Եւ առաքեաց ոզիա 'ի բետմեսթեմ: 5
և 'ի քոբայ. և 'ի կոլայ. և յամ սահ-
մանս իղի աւետաւորս վասն իրացն՝
որք եղեն. զի ամենեքին ժողովեսցին.
և մտցեն զհետ նոցա սատակել զնս:
*Եւ իբրև լուան որդիքն իղի. ամենե 6
քեան առ հասարակ յարձակէին՝ և ան-
կանէին 'ի վր նց. և կոտորէին՝ և հար-
կանէին զնս մինչև 'ի քոբայ: սոյնպէս
և եէմայիքն առնէին. և ամենեքեան
որք 'ի լեռնակողմանսն եկեալ էին՝
պատմեցին նց. որ եղև 'ի բանակին.
և որք 'ի գաղաադն էին. և որք 'ի գալի
լեայ, հասանէին՝ հարկանէին՝ և վա-
նէին զնս. մինչև անցուցանէին զնս ը
դամասկոս և ընդ սահմանս նորա:
*Եւ այլք բնակիչքն բետիղուայ եկա 7
նէին՝ անկանէին 'ի վերայ բնակչացն
բնադրացն ասուրայ. աւար հարկա-
նել՝ ժողովել զառ և զապուր բանա-
կացն՝ յորս յղփացան՝ լցան՝ և մեծա-
ցան յոյժ բնակիչքն բետիղուայ:
*Եւ որդիքն իղի դարձան 'ի կոտո- 8
րածէ անտի. և սկսանէին ժողովել
զկապուտն և զկողոպուտ անկելոցն:
և գեօղքն և ագարակքն լեռնակող-
մանցն և դաշտականաց, և եկեալ առ-
նուին զմնացորդս յոյժ աւարացն:
*Եւ յովակիմ քահանայ մեծ՝ և ծե- 9
րակոյտ որդւոցն իղի. որք բնակեալք

էին յեհէմ, եկին տեսանել զբարու-
թիւն՝ զոր արար Տր Ած իղի: և տե-
սանել զյուդիթ՝ և խօսիլ ընդ նմա
10 զխաղաղութի: *Եւ իբրև մտեալ
տեսին զնա, օրհնեցին զնա ամենեքին
միաբան՝ և ասեն ցնա: դու բարձրու-
թի եէմի. դու ցնծութի իղի. դու
11 պարծանք ազգիս մերոյ: *Զի արա
րեր զայս ամ բարութիս ձեռօք քովք
իղի: և հաճեցաւ ընդ նոսա Ած. և
օրհնեալ եղիջիր դու յամենակալէն
12 Այ մինչև յաւիտեան: *Եւ ասէ ամ
13 ժողովուրդն՝ եղիցի: *Եւ ժողո-
վուրդքն կրէին զաւար բանակին զա-
ւուրս երեսուն: և ետուն յուդիթայ
զխորանն հողոփեռնեայ. և զամ զար
ծաթ խորանին և զգահոյսն. և զամե
նայն զսպասսն նորա զոսկւոյ և զար-
ծաթոյ. և նորա առեալ կուտէր զայն
'ի սայլս իւր. և 'ի վերայ գրաստուց
իւրոց. և բերէր 'ի ներքս 'ի քաղաքն:
14 *Եւ եկին առ նա ամ կանայք որդ-
ւոցն իղի տեսանել զնա. և օրհնեցին
զնա. և նուագէին նմա երգս պարուք.
և առեալ նորա ոստս արմաւենեաց և
ձիթենեաց ծաղկօքն հանդերձ, և
15 տայր նց: *Եւ այլևս կանայք մեծա
մեծք տեղեացն գային գունդագունդք
գովել զնա: և ամ լինել զկնի երթային
նց վառեալք և կազմեալք. պսակս
գունակս գունակս 'ի գլուխս իւրեանց.
և օրհնութիք ամենեցուն 'ի բերանս
իւրեանց փառաւորել զԱծ:

## ԳԼ: ԺԶ:

1 Եւ սկսաւ յուդիթ օրհնել զօրհ-
նութիս զայս. և ամ լինել նուա
2 գէին ընդ նմա: *Եւ ասէ յուդիթ.
երգեցէք Տն թմբկօք. և օրհնեցէք
զնա ծնծղայիւք. և ուղղեցէք նմա
երգս և օրհնութիս: բարձր արարէք
3 զնա. և կարդացէք զանուն նր: *Զի
Ած խորտակէ զպատերազմունս Տր.
4 *Եւ զբանակս նր 'ի մէջ ժողովրդոց:
փրկեաց զիս 'ի ձեռաց հալածչաց իմոց:
5 *Եկն ասուր 'ի լերանց հիւսիսոյ. եկն
'ի բիւրաւորս զօրօք իւրովք: որոց
բազմութիւն ծածկեաց զձորս. և բազ
մութի երիվարաց նորա ծածկեաց
6 զբլուրս: *Եւ ասաց հրձիգ առնել
զսահմանս իմ. և զերիտասարդս իմ
ընդ աթուր հարկանել. և զտղայս իմ
աւար հարկանել. և զկուսանս իմ վա
7 րել 'ի գերութե: *Տր Ած ամենակալ
կործանեաց զնոսա 'ի ձեռն կնոջ:
8 *Զի ոչ անկաւ հզօր նոցա յերիտա-
սարդաց. և ոչ որդիք տիտանացւոց
սատակեցին զնա. և ոչ բարձունք հսկա

կայք

կայք յարեան 'ի վերայ նորա ։ այլ յուդիթ դուստր մերարայի ․ գեղեցկութբ երեսաց յոյժ խաբեաց զնա ։ 9 * Օ՛ի մերկացաւ զհանդերձն այրութե՛ իւրոյ 'ի բարձրութի այնոցիկ ․ որք կափեալքն էին յիսրայէլի ։ 10 * Եւ էօծ զերեսս իւր յանոյշ իւղոյ ․ և յօրինեաց զգլուխ իւր զարդու իւրով ․ և էառ նա զշղաշատեան 'ի խաբէութի նորա ։ 11 * Եւ 'ի գեղ ոտիցն կօշկացն նր̅ մոլորեցաւ սիրտ նր̅ ․ և գեղեցկութի նորա գերեաց զանձն նր̅ ․ և էանց դաշոյնն ընդ փող նորա ։ 12 * Դողացան պարսիկք 'ի քաջասրտութենէ նորա ․ և մարք 'ի քաջութէ նր̅ խռովեցան ։ 13 * Յայնժամ աղաղակեցին տառապեալքն իմ․ և գոչեցին հիւանդքն իմ ․ և յաղթեցան ։ բարձրացուցին զձայնս իւրեանց՝ և լքան ։ 14 * Որդիք աղջկանց խոցոտեցին զնս̅ ․ և որ̅պ զորդիս տնանկաց պանդխտաց կոտորեցին ․ և կորեան 'ի պատերազմէ Տն̅ իմոյ ։ 15 * Օրհնեցից զՏր̅ Ա̅ծ իմ յօրհնութի նոր ։ 16 * Տր̅ մեծ ես դու և փառաւորեալ․ սքանչելի ես զօրութեամբ անպարտ ։ 17 * Քեզ ծառայեսցեն ամ̅ ստացուածք քո․ ‖ զի ասացեր, և եղեն․ առաքեցեր զհոգի քո՝ և ստացան՝ և շինեցան․ և ոչոք է որ ընդդէմ կայ ձայնի քոյ ։ 18 * Լեռանց լերինք 'ի հիմանէ ջրովքն հանդերձ սասանեսցին․ և վէմք առաջի երեսաց քոց իբրև զմոմ հալեցան․ և երկիւղածաց քաւիչ լինիս դու նց̅ ։ զի ամ̅ սակաւ իկ զոհ 'ի հոտ անուշութե ․ և ճնչին ճարպն յողջակէզս է ։ 19 * Լ̅ լոր երկիւղածն է՝ նա մեծ է յաւիտեան ։ 20 * Վայ ազգացն այնոցիկ ․ որք յարուցեալք են 'ի վր̅ ազգիս մերոյ ։ և Տր̅ ամենակալ խնդրեսցէ զվրէժ 'ի նոցանէ յաւուրն դատաստանի ։

‖ Ծննդ. 1. 1. Սաղմ. 32.9.

21 * Եւ տացէ զհուր և զորդունս 'ի մարմինս նց̅ ․ և լացցեն նոքա 'ի զգալն մինչև յաւիտեան ։ 22 * Եւ իբրև չոգան նոքա յեմ̅, երկիրպագին Ի̅Է ․ և յորժամ սրբեցաւ ժողովուրդն, հանին զողջակէզսն իւրեանց․ և զկամաւորականն՝ և զպատարագսն իւրեանց ։ 23 ‖ Եւ էհան՝ և նուիրեաց յուդիթ զամ̅ կահն և զկարասին հողոփեռնեայ ․ և ետ զայն 'ի նուէրս Տն̅ Ի̅Է ։ 24 * Եւ ուրախ լինէր ժողովուրդն յեմ̅ դէմ յանդիման սրբոցն զամիսս երիս ․ և յուդիթ մնայր ընդ նոսա ։ 25 * Եւ յետ աւուրցս այսոցիկ չուեցին՝ և գնացին իւրաքանչիւր 'ի ժառանգութի իւրն̅ ։ և յուդիթ գնաց 'ի բեթիղուայ․ և դարմանէր զգտուն իւր ։ 26 * Եւ եղև 'ի ժամանակէ անտի յայնմանէ փառաւորիւր անուն նորա ընդ ամ̅ երկիր ։ 27 * Եւ բազումք ցանկացան նմա զամ̅ աւուրս կենաց նր̅ ․ յորմէ հետէ մեռաւ մանասէ այրն նր̅ ․ և յաւելաւ 'ի ժողովուրդ իւր ։ 28 * Եւ լինէր յուդիթ մեծացեալ և պատուեալ օր քան զօր ․ և ծերացաւ նա անդէն 'ի տան առն իւրոյ ամս հարիւր և հինգ ․ և ազատեաց նա զնաժիշտն իւր ․ և մեռաւ նա 'ի բեթիղուայ ․ և թաղեցին զնա 'ի շիրմի առն իւրոյ մանասէի ։ 29 * ‖ Եւ սուգ առին 'ի վր̅ նորա ամ̅ տուննն Ի̅Ղի զաւուրս եօթն ․ և բաժանեաց նա զինչս իւր՝ մինչչև մեռեալ էր ինքն՝ ամենեցուն որք ազգականք էին մանասէի առն նորա ․ և ամենեցուն որք մերձաւորքն էին իւրոյ ։ 30 * Եւ ոչ էր՝ որ զարհուրեցուցանէր զորդիսն Ի̅Ղի յաւուրս յուդթայ, և յետ մեռանելոյ նր̅ զաւուրս բազումս ։

‖ 2 Թագ. 8.11.

‖ Ծննդ. 50.10.





Եւ էառ զգաւազանն ոսկի · և եդ 'ի վզ պարա_ նոյ եսթերայ թագուհւոյն: Յաւել. 15. 14.



Եւ հեծոյց համան զմուրթքէ յերիվարն արքունի, և ածոյր ընդ ամ փողոցս քաղաքին: Յաւել. 6. 11.

# ԳԻՐՔ ԵՍԹԵՐԱՑ·

Գլուխ Մետասաներորդ:

ՅԱՄԻՆ 2 ԵՐԿՐՈՐԴԻ թագաւորութեան արտաշէսի ար_ քայի մեծի · յա_ ռաջնում աւուր ամսոյն ադարայ· որ է հայերէն ա_ րեգ · տեսիլ եաես մուրթքէոս որդի յայիրայ՝ որդւոյ սեմեայ՝ որդւոյ կի_ սեայ · յազգէ բենիամինի : * Այր 3 հրէայ · և էր բնակեալ 'ի սուսա քա_ ղաքի՝ այր մեծ՝ և հաւատարիմ ամ իրաց տան թագաւորին : * Եւ էր 4 նա 'ի գերութենէ անտի · զոր գերեաց նաբուգոդոնոսոր արքայ բաբիլաց_ ւոց յերեմէ · յեքոնիաէ հանդերձ ար_ քայիւն հրէաստանի : * Եւ այս է ե_ 5 րազ տեսլեան նորա · զոր տեսանէր · ձայն խռովութեց՝ և որոտմանց՝ և շարժմանց · և էր խռովութի մեծ 'ի 6 վերայ երկրի : * Եւ ահաւասիկ եր_ կու վիշապք մեծք յոյժ պատրաս_ տեալք ելանէին 'ի կռիւ ընդ միմեանս : 7 * Եւ եղև 'ի նոցանէ ձայն մեծ · և 'ի ձայնէ բարբառոյն նոցա պատրաստե ցան ամ ազգք 'ի պատերազմ · (զի տա ցեն պատերազմ ընդ ազգին արդա_ 8 րոյ :) * Եւ էր օրն խաւարին և մթին՝ տառապանաց և նեղութեց · և էր խռո_ 9 վութի մեծ 'ի վերայ երկրի : * Եւ խռովեցաւ ամ արդար ազգն վասն իւրեանց չարեաց · և պատրաստեցան 'ի կորուստ · և կարդացին նք առ Այ : 10 * Եւ 'ի ձայնէ անտի նոցա եղև իբրև 'ի փոքրիկ աղբերէ գետ մեծ յորդառատ : 11 * Եւ արեգակն ծագեցաւ · և խո_ նարհքն բարձրացան՝ և կերին զփա_ 12 ռաւորսն : * Եւ զարթեաւ մուրթքէ 'ի տեսլենէ աստի յայսմանէ · զոր Այ խորհեցաւ առնել · և ունէր զտեսիլ երազոյն 'ի սրտի իւրում · և յամենայն զօրութեն իւրում կամէր գիտել · եթէ զինչ

Մերն. 2. 5. — սուսան — Դ. Թագ. 24. 15. — Երեմ. 24. 1.

զինչ իցէ տեսիլն. զոր ետես անդէն ՚ի նմին գիշերի:

## Գլ: ԺԲ.

Եւ դադարեաց Մուրթքէ յապարանսն դաբիթեաւ համդերձ և Թարրայիւ երկոքումբք ներքինեօք Թագաւորին. որք էին պահապանք ապարանից Թագաւորին: 1

*Եւ իբրև գիտակ եղև Մուրթքէ խորհրդոց ներքինեացն՝ և զկամս սրտից նոցա քննեաց՝ եթէ պատրաստեալ են նոքա ձեռն արկանել ՚ի Թագաւորն Արտաշէս. և եցոյց արքային զխորհուրդս նոցա: 2

*Եւ եհարց Թագաւորն զերկոսին ներքինիսն. և նոքա խոստովան եղեն նմա. և հրամայեաց զնոսա կախել: 3

*Եւ գրեաց Թագաւորն զբանս զայսոսիկ ՚ի յիշատակս. և Մուրթքէ գրեաց վասն բանից այսոցիկ: 4

*Եւ ետ հրաման Թագաւորն Մուրթքէի մեծաւ զգուշութեամբ առաւել ևս դարման տանել տան Թագաւորին. և ետ նմա պարգևս: 5

*Եւ եղև յետ բանիցս այսոցիկ յաւուրս Արտաշէսի: 6

Ա Եզր. 2.21. և 6. 2. — կախել

## Գլ: Ա.

Որ Արտաշէս կալաւ ՚ի Հնդկաց աշխարհէն հարիւր քսան և եօթն գաւառ: 1

*Ի նմին աւուրս՝ յորս նստաւ ՚ի Սուսիս քաղաքի: 2

*Յամին երրորդի Թագաւորութեան իւրում. արար Թագաւորն կոչունս սիրելեաց իւրոց և մեծամեծաց՝ և այլոց ևս ազգաց Պարսից և Մարաց՝ և ամ իշխանաց նախարարացն: 3

*Եւ իբրև եցոյց նոցա զմեծութիւն Թագաւորութեան իւրոյ. և զփառաւորս ուրախութեան վայելչութեան: 4

*Եւ յօրժամ յանկ ելանէին աւուրք հարսանեացն. դարձեալ միւսանգամ հրաման ետ կոչել ՚ի հարսանիսն զամենայն քաղաքացիս իւր ՚ի գաւիթ տանն արքունի զաւուրս վեց: 5

*Որ էր զարդարեալ բեհեզօք և կերպասեօք. զորս էր կարգեալ և կապեալ զլարօքն ծիրանեօք և բեհեզօք. և զորս էր կապեալ ՚ի խոյակսն ոսկիս. և ՚ի ծիրանիս ոյք կային ՚ի վերայ սեանցն պատուականաց. և ՚ի խարսխացն ոսկեղինաց. ուր կային գահոյք բազումք ոսկեղէնք և արծաթեղէնք ընդելուզեալք մարգարտօք և ականբք պատուականօք. լցեալս պաստառօք. և գունագոյն նկարուք. և պատուական հանդերձիւք ՚ի վերայ վարդայատակ դաւթին: 6

*Որ կային Թակոյք և ըմպելիք Թագաւորին ոսկեղէնք և արծաթեղէնք. որք էին յերից բիւրուց քան 7

կա

8 քարաց: *Եւ գինի յոյժ արքայի ըմպելի, այլ կոչունքս որպէս օրէն էր. եղև. վասն զի այսպէս կամեցաւ Թագաւորն առնել պաշտօնեայ ծառայից:

9 *Եւ Աստինէ կին Թագաւորին արար կոչունս կանանց յապարանս Թագաւորին Արտաշէսի:

10 *Եւ յաւուրն եօթներորդի, յանձն իւր զուարճացեալ լինէր Թագաւորն. և ասէ ցԱմման. և ցԲազան. և ցԹառայ. և ցԲուրազէ. և ցԹառաբբայ. ցեօթանեսին ներքինեաց ցպաշտօնեայս իւր: ներքինիս

11 *Կոչել զկինն յարքունիս Թագաւորին և ցուցանել ամ իշխանաց և ազգաց զգեղեցկութիւն նորա. զի էր գեղեցիկ յոյժ:

12 *Եւ ոչ լուաւ նմա Աստինէ գալ առ նա ընդ ներքինիսն. և տրտմեցաւ Թագաւորն՝ և բարկացաւ յոյժ:

13 *Եւ ասէ ցսիրելիսն իւր զիրսն. զոր արար Աստինէն. արդ՝ արարէք ասէ Թագաւորն այսուհետև օրէնս և իրաւունս:

14 *Եւ մատեան առաջի նորա արքինակոս՝ և առնաթե. և Մաղիսեար. իշխանք Պարսից և Մարաց. որք էին մերձաւորք և աթոռակիցք արքային:

15 *Եւ պատմեցին եթէ որպէս օրէն է առնել Աստինեայ Թագաւորին կնոջ. զի ոչ արար զհրամանս արքային. զոր հրամայեաց նմա ՚ի ձեռն ներքինեացն:

16 *Եւ ասէ Մուքեւս ցարքայ և ցիշխանսն. ոչ եթէ զարքայի միայն ընդդէմ դարձաւ Աստինէ տիկնաց տիկինն. այլ ամ իշխանաց և կուսակալաց արքայի:

17 *Սոյնպէս և ամ կանայք լինին անհնազանդք իշխանաց Պարսից և Մարաց:

18 *Յորժամ լսեն զարհամարհանս կնոջ Թագաւորիս, համարձակին իշխել և անարգել զարս իւրեանց:

19 *Արդ եթէ կամք իցեն՝ և հաճոյ թուեսցի արքայի. մի մտցէ նա առ արքայ. և զտիկնութիւն նորա տացէ կնոջ. որ լաւ ևս իցէ քան զնա:

20 *Եւ լուիցեն զօրէնս՝ զոր հրամայես ՚ի Թագաւորութեանդ քում. և պատուեսցեն կանայք զարս իւրեանց պատուով մեծաւ՝ յաղքատաց մինչև ՚ի մեծամեծս:

21 *Եւ հաճոյ թուեցաւ բանն արքայի և ամ իշխանաց նորա. և արար Թագաւորն. ոմ և խօսեցաւ Մուրթքեւս:

22 *Եւ առաքեաց ընդ ամ Թագաւորութիւնս իւր ՚ի գաւառս ամենայն. ըստ հրամանին. որ եդաւ ՚ի վերայ կանանց ամենեցունց:

## Գլ: Բ.

1 Եւ յետ բանիցս այսոցիկ դադարեաց Թագաւորն ՚ի բարկութենէ անտի. և ոչ յաւել յիշել ևս զԱստի-

նէ.

նէ․ զի 'ի միտ ունէր․ զոր խօսեցաւն նա․ և այսպէս մերժեալ ընկեցաւ կինն ։
2 * Եւ ասեն սպասաւորք թագաւորին․ խնդրեսցին արքայի աղջկունք կոյսք գեղեցիկք տեսլեամբ ։ 3 * Եւ հրամայեսցէ արքայ գաւառապետս կացուցանել ընդ ամ երկիր թագաւորութեան քո․ և ընտրեսցեն աղջկունս կոյսս․ և տացեն ածել 'ի սուսէն քաղաք 'ի կուսանոց մի․ և տացեն զնոսա ցոլգեայ ցներքինին արքունի․ որ պահապան է կանանց․ և հրամայեսցէ արքայ տալ նոցա իւղ և աձառ․ և զայլ դարմանս ։ 4 * Եւ կին, որ հաճոյ լիցի արքայի, թագաւորեսցէ նա փոխանակ աստինեայ․ և հաճոյ թուեցաւ արքայի իրքն․ և արար այնպէս ։
5 * Եւ էր այր մի հրէայ 'ի սիւսիս քաղաքի․ և անուն նորա մուրթքէոս․ որդի յայիրայ՝ որդւոյ սեմեայ․ որդւոյ կիսեայ․ յազգէ բենիամինի ։ 6 * Որ էր գերի եկեալ յերուսաղեմէ․ զոր գերեաց նաբուգոդոնոսոր արքայն բաբիլացւոյ ։
7 * Եւ էր նորա մանուկ սնուցեալ դուստր ամինադաբայ եղբօր հօրն իւրոյ․ և անուն էր նորա եսթեր ։ և յառնուլ զնա 'ի մօրէ և հօրէն իւրմէ, կամէր առնուլ իւր կնութեան․ և էր աղջիկն բարի յոյժ տեսլեամբ ։ 8 * Եւ յորժամ լուաւ եղև հրաման թագաւորին․ և ժողովեցան աղջկունք բազումք 'ի սիւսան քաղաք․ որ էր ընդ ձեռամբ ոլգեայ՝ և տարան զեսթեր առ ոլգեայ․ որ էր ներքինի 'ի վերայ կանանց ։ 9 * Եւ հաճոյ եղև նմա աղջիկն․ և եգիտ նա շնորհս առաջի նորա․ և փութացաւ նմա տալ զաձառն և զմասն դարմանոյ նորա․ և զեօթն աղջիկսն․ զորս տուեալ էր նորա նաժիշտս յարքունուստ․ և դարմանէր զեսթեր առաւելագոյն քան զայլ ընկերս նորա․ և զնաժիշտս նորա նոյնպէս ։ 10 * Եւ ոչ եցոյց եսթեր զազգն՝ և ոչ զգաւառն․ վասն զի պատուիրեաց նմա մուրթքէ մի պատմել ։ 11 * Եւ յաճախէր մուրթքէ զամ օր շրջիլ առ տամբ կանանցն․ տեսանել եթէ որպիսի անցք անցցեն ընդ եսթեր ։ 12 * Օր մերձ էր ժամանակ աղջկանն մտանել առ թագաւորն․ յորժամ լնանէին ամիսք երկոտասան․ զի այսպէս կատարէին աւուրք դարմանոյ նոցա․ ամիսս երեք օծանէին եղօք անուշիւք․ և ամիսս վեց 'ի խունկս անուշունս․ և յաձառս և 'ի լուանալ կանանցն ։ 13 * Եւ ապա մտանէր առ արքայն․ և որում կամէր տալ զնա 'ի ձեռս՝ նա մտանէր ընդ նմա 'ի սենեակն առաջի թագաւորին ։ 14 * Ընդ երեկս մտանէր առ թագաւորն․ և ցերեկ երթայր անդրէն առ ընկերս իւր, և առ ուգայ ներքինին պահապան կանանցն․ և կայր անդէն․ մինչև կոչէին զնա յականէ 'ի սենեակ թագաւորին ։ 15 * Եւ իբրև լնանիւր ժամանակ եսթերայ դստերն ամինադաբայ եղբօր հօրն մուրթքէի մտանել առ արքայն․ և ոչինչ ապախտ արար․ զոր միանգամ պատուիրեաց նմա ներքինին․ որ էր պահապան կանանցն․ զի էր եսթերայ գտեալ շնորհս յամենեցունց․ որք միանգամ տեսանէին զնա ։ 16 * Եւ եմուտ եսթեր առ արքայն յերկոտասաներորդ ամսեանն ադար (որ է հայրերէն արեգ) յեօթներորդ ամի թագաւորութեան իւրոյ ։ 17 * Եւ հաճոյ թուեցաւ եսթեր արքայի յոյժ․ և եգիտ նա շնորհս քան զամ կանայսն․ և եդ 'ի վերայ գլխոյ նորա պթագ կանանցն ։ 18 * Եւ արար թագաւորն կոչունս ամ սիրելեաց իւրոց․ և զօրացն իւրոց աւուրս եօթն․ և բարձրացոյց նա զհարսանիսն եսթերայ․ և հրաման ետ թողութի առնել ամենեցուն․ որք ընդ թագաւորութբ նորա էին ։ և մուրթքէ դարմանէր՝ և կազմէր զտունն ։ 20 * Այլ եսթեր ոչ եցոյց զերկիր հայրենի գաւառին իւրոյ․ զի այսպէս պատուիրեալ էր նմա մուրթքէի․ երկնչել յԱծոյ՝ և առնել զհրամանս նորա․ որպէս էր նա առ նմա յառաջ․ և եսթեր ոչ փոխեաց զիւր կարգն ։ 21 * Եւ տրտմեցան երկու ներքինիք արքային՝ որք պահապանապետքն էին մարդկանն․ վասն զի նախանձէին ընդ մուրթքէի առաւել քան զնոսա պատուելոյ 'ի թագաւորէն․ և կամէին սպանանել զարտաշէս արքայ ։ 22 * Եւ ազդ եղև մուրթքէի բանս այս․ և յայտնեաց եսթերայ․ և եսթեր եցոյց արքայի զխորհուրդս մահուն ։ 23 * Եւ արքայն կշտամբեաց զերկոսին ներքինիսն․ և կախեաց զնոսա զփայտէ․ և հրամայեաց թագաւորն զիրսն զայն գրել զգուշութբ․ եթէ որպէս հաւատարիմ եղև առ նա մուրթքէոս ։

## ԳԼ ։ Գ․

1 Եւ փառաւորեաց արքայ արտաշէս զհաման դաթուբաւ համդերձ և ընկերօքն նորա․ և բարձրացոյց զնա յառաջին աթոռ քան զամենայն սիրելիս իւր ։ 2 * Եւ ամենեքին․ որք միանգամ էին 'ի տան թագաւորին՝ երկիր պագանէին նմա․ զի այսպէս հրամայեաց թագաւորն առնել․ այլ մուրթքէ ոչ պագանէր նմա երկիր ։ 3 * Եւ խօսեցան մե-

մեծամեծք թագաւորին ընդ Մուրթ-
քէի՛ և ասեն. Մուրթքէ՛ ընդէ՞ր ոչ պա-
գանես դու երկիր ըստ հրամանի թա-
գաւորին: * Զի յամենայն օր խօսէին 4
ընդ նմա. և նա ոչ լսէր նոցա. և ամ-
բաստան եղեն զՄուրթքէէ առաջի
Համանայ. և Մուրթքէ ոչ հնազան-
դեցաւ հրամանացն արքայի. քանզի
հրէայ էր: * Եւ յորժամ գիտաց Հա- 5
ման. եթէ ոչ պագանէ նմա երկիր.
բարկացաւ յոյժ: * Եւ խորհուրդ ա- 6
րար. զի կորուսցէ զհրէայսն. որք ՃԻԷ
թագաւորութեան արտաշէսի իցեն. և
արարին հանդէս համարոյ: * Յամսեան 7
երկոտասաներորդի թագաւորութեան
արտաշէսի. և արկանէր վիճակ օր
յօրէ՛ և ամիս յամսոյ. զի որպէս կո-
րուսցէ 'ի միում աւուր զազգն Մուրթ-
քէի. և անկաւ վիճակն 'ի չորեքտա-
սան ամսոյն ադար: * Եւ խօսեցաւ ընդ 8
արքային՛ և ասէ. գոյ ազգ ցրեալ ընդ
հեթանոսս՛ և ընդ ամ թագաւորութե
քում. որք են ապիրատք՛ և խորամանկք
քան զամ ազգս. և օրինաց արքունի
ոչ հնազանդին. և ոչ օգուտ են ար-
քայի, եթէ թողուս դու զնոսա:
* Արդ եթէ կամք իցեն արքայի, հրա 9
ման տացես կորուսանել զնոսա. և ես
կարգեցից 'ի գանձս արքունի բիւր
քանքարս արծաթոյ: Եւ էհան ար- 10
քայ զմատանին իւր. և ետ զնա 'ի ձեռս
Համանայ գրել զհրէիցն՛ և կնքել առ
'ի կորուսանել զնոսա: * Եւ ասէ թագա 11
ւորն ցՀաման. զարծաթդ կալ ընդ քեզ.
և զազգդ վայրդ արա որպէս և կամիս:
* Եւ կոչեցին զդպիրսն արքունի, 12
յամսեանն առաջնում՛ յաւուրն երեք
տասաներորդի. և գրեցին որպէս և հրա-
մայեաց նա Համան. զօրավարաց իշխա
նաց ընդ ամենայն գաւառս 'ի Հնդ-
կաց մինչև յեթէովպացիս. հարիւր
քսան և հինգ գաւառս. և իշխանացն
ազգաց գիր՛ իւրաքանչիւր լեզուաւ՛
արտաշէսի հրամանաւ: * Եւ առա- 13
քեցան հրովարտակքն 'ի ձեռն հրեշ-
տակաց ընդ ամ իշխանութիւնն ար-
տաշէսի. կորուսանել զազգն հրէից
յաւուր միում, ամսեանն երկոտա-
սաներորդի. որ է ադար. և յափշտա
կել զամենայն ինչս և զստացուածս
նոցա: * Եւ հրաման հրովարտակին 14
էր այսպէս:

## ԳԼ: ԺԳ:

1 Արքայ մեծ Արտաշէս՝ ձեզ՝ որ էք
'ի կողմանս Հնդկաց և Եթէով-
պիայ. իշխանաց և պետաց ձեզ հնազան
դելոց: * Եւ ամենայն երկրի զայս 2



դրել կամեցեալ՛ ոչ յաստամբ իշխա-
նութեանս հպարտացեալ՛ այլ քաղցրու-
թեամբ և խոնարհութեամբ կարգեալ՛
զի զայսոսիկ՛ որք 'ի հնազանդութե
իցեն, անշուշտ յամենայն ժամ հաս-
տատել զկեանս նոցա. զթագաւորու-
թիւն խաղաղութե մինչ 'ի ծագս երկ-
րիս. տալ և նորոգել զխաղաղութի.
3 որում ցանկացան ամ մարդիկ: * Հա-
ւատացեալ իմ. որք խորհրդակիցս են
իմ. զի ոմն 'ի գլուխ տարցի զիրսս. որ
զիմաստութի և զհնամատանց փոփո
խելոյ հաստատուն հաւատովք յայտ-
նեալ. որով արժանի լեալ երկրորդ ա-
4 թոռակցութե իմոյ Համան: * Եւ ե-
ցոյց մեզ. որ ընդ ամ տիեզերս ազգ
խառնեալ են դժնդակ ժողովուրդ.
ոմն խափան օրինաց. որք ընդդէմ
կան թագաւորաց. և 'ի բաց մերժեն
յիւրեանց զհրամանս. առ 'ի չլսել նոյ.
որ 'ի մէնջ ուղղեալ և հաստատեալ
5 անշուշտ մերոյ իշխանութեանս: * Արդ
կալեալ զազգս զայս միայն բոլան-
դակ ազգաւ իւրեանց առաջի ամ
մարդոյ. որք միանգամ իցեն. և ըզ
կարգս օրինաց օտարաց 'ի բաց փո-
խել. և որք դժնդակք են՛ և ընդդէմ
մերոյ իրաց. յորոց ձեռաց կատարին
ամենայն չարիք՛ որք են թշնամիք մե-
6 րոյ թագաւորութեանս: * Կարգեցաք
այժմիկ՛ վասն որոյ ձեզ ազդ արարաք
գրովս մերով այսուիկ. և 'ի Համա-
նայ. որ հաստատեալ կացեալ է 'ի վր
իրացս այսոցիկ. և երկրորդի հօր մե-
րոյ. զամենեսեան կանամբք և որդ-
ւովք հանդերձ կորուսանել և խլել
որով թշնամեաց՛ առանց գթալոյ և
խնայելոյ յամսեանն երկոտասանե-
րորդում 'ի չորրորդ աւուրն՛ որ է ա-
7 դար: * Դ տարուոջս յայսմիկ մահու
չարաւ 'ի դժոխս իջցեն յաւուր միում.
և յետ այդր ժամանակի եղիցի խաղա
8 ղութի մեզ իրացդ այդոցիկ: * Եւ
պատճէնք հրովարտակացն սփռեալ
գրէին ընդ ամ գաւառսն. և իբրև
ել հրամանն այն, ամենեքին պատ-
րաստք լինէին յաւուրն յայնմիկ. փու-
թանակի հասանէին իրքն այն և 'ի
շուշան քաղաք. և թագաւորն և Հա-
ման զարդարէին զվարս իւրեանց.
և խռովէին ամենայն քաղաքն:

## ԳԼ: Դ:

1 Եւ Մուրթքէ իբրև գիտաց զիրսն՛
պատառեաց զպատմուճանն իւր.
և զգեցաւ քուրձ. և ցանեաց մոխիր
զգլխով իւրով. և ընթացաւ ընդ հրա
պարակս քաղաքին. 'ի ձայն բարձր

աղաղակէր՝ և ասէր. արդ ընդէ՞ր բառնայք զուր օտար տարապարտուց զազգդ իմ, որ ոչինչ գործեաց չարիս:
*Եւ եկն մինչև 'ի դրունս տանն արքունի՝ և եկաց. զի ո՛չ իսկ էր արժան նմա մտանել 'ի գաւիթն արքունի. զի զգեցեալ էր զքուրձ և զմոխիր: 2
*Եւ ընդ ամ գաւառս ուր և կարդային զգիրն. աղաղակ՝ և կոծումն՝ և սուգ մեծ լինէր հրէիցն. և արկանէին քուրձ և մոխիր զիւրեամբք: 3
*Եւ մտին ներքինիքն և նաժիշտքն տիկնոջ տիկնոջն. և պատմեցին եսթերայ. և խռովեցաւ յոյժ. իբրև լուաւ վն հրամանին՝ զոր ետ թագաւորն. և առաքեաց զգեցուցանել զհանդերձն մուրթքէի. և հանել 'ի նմանէ զքուրձն. և նա ոչ հաւանեցաւ նմա: 4
*Եւ եսթեր կոչեաց զառնաթև ներքինին. որ կայր հանապազ առաջի նորա՝ և առաքեաց ճշմարտել 'ի մուրթքէէ՝ եթէ արդարև այնպէս իցէ: 5
*Եւ ելեալ առնաթև առ մուրթքէ յապարանս քաղաքին. որ էր հանդէպ դրան թագաւորին: 6
*Եւ մուրթքէ եցոյց նմա զիրսն. ո՛րպ և լեալ էին. և զխոստումն. զոր խոստացաւ համան արքայի, տալ գանձ բիւր քանքար. զի կորուսցէ զհրէայսն: 7
*Եւ զպատճէն որ 'ի սուսիս քաղաքի կարդացեալ էր առ 'ի կորուսանել զնոսա՝ ետ զայն ցներքինին. զի ցուցցէ եսթերայ: 8

## Գլ: ԺԵ.

1 Եւ ասէ ցնա պատուիրելով. զի մտցես՝ և խնդրեսցես յարքայէ. աղաչեսցես վասն ժողովրդեանն:
2 *Օն յիշեսցես զաւուրս տառապանաց քոց. ո՛րպ և սնար 'ի ձեռս իմ. վն զի համան երկրորդ արքայի խօսեցաւ զմէնջ 'ի մահ:
3 *Արդ՝ աղաչեսցես զՏր Ած խնդրուածովք՝ և խօսեսցիս՝ առէ՞ թագաւորին վն մեր. և փրկեսցես զմեզ 'ի մահուանէս:
4 *Եւ եմուտ առնաթև. և խօսեցաւ ընդ նմա զամ զբանս զայս:
5 *Եւ ասէ եսթեր ցառնաթև. գնա՛ դու առ մուրթքէ և ասա՛:
6 *Եթէ ազգ ամ թագաւորութեանս գիտէ. եթէ ամ այր, կամ կին. որ մտանիցէ առ արքայ 'ի ներքին սենեակն առանց կոչելոյ նորա՝ չիք փրկութի. բայց միայն առ որ ձգէ արքայ զոսկի գաւազանն. նա միայն ապրի. և ես ոչ եմ կոչեցեալ մտանել առ արքայ. զի են այս աւուրք երեսուն:

## Գլ: Դ.

12 Եւ պատմեաց առնաթև զամենայն զբանսն եսթերայ:
13 *Եւ ասէ մուրթքէ ցառնաթև՝ երթ և ասա՛ դու նմա. եսթեր՝ մի՛ ասեր դու յանձն քո. եթէ ես միայն ապրեցից 'ի թագաւորութեանս յամ հրէից:
14 *Եւ եթէ ոչ լուիցես 'ի ժամանակիս յայսմիկ. յայլ ուստեք լինի օգնականութի և փրկութի հրէիցս, այլ դու և տուն հօր քոյ կորնչիք. և ո՛ իսկ գիտէ. եթէ 'ի ժամանակի յայսմիկ թագաւորեցեր:
15 *Եւ առաքեաց միւսանգամ եսթեր առ մուրթքէ՝ և ասէ:
16 *Գնա՛ դու՝ և ժողովեա՛ զհրէայսն. որք են 'ի սուսիս քաղաքի. և պահեցէ՛ք ինձ պահս. և մի՛ կերիջիք. և մի՛ ըմպեսջիք զաւուրս երիս. մի՛ զտիւ, և մի՛ զգիշեր. և ես, և նաժիշտք իմ զգուշանամք պահել. և ապա մտից ես առ արքայ. քանզի առնել զայս, արտաքոյ է օրինաց թագաւորին. արարից զայդ. և եթէ իցէ ինձ մեռանիլ. և ոչ յապաղեցից:
17 *Եւ գնաց մուրթքէ՝ և արար. որպէս և պատուիրեաց նմա եսթեր:

## Գլ: ԺԳ.

8 Եւ աղաչեաց խնդրուածովք զՏր 'ի միտ առեալ և յիշեալ զգործս մեծամեծս Տն. և ասէ:
9 *Տէր Ած թագաւոր ամենակալ. զի քում հրամանիդ սպասէ ամ ոք. ոչո՛ք է՝ որ ընդդէմ կայ քեզ. յորժամ կամիցիս դու կեցուցանել զժողովուրդ քո զիէլ:
10 *Զի դու Տր արարեր զերկինս և զերկիր՝ և զամ սքանչելիս:
11 *Եւ դու տիրես 'ի վր ամի. և ոչոք է՝ որ հակառակ կայ քում Տրութեդ:
12 *Որ զամ գիտես. զի ոչ հպարտութբ ինչ. և ամբարտաւանութբ. և ոչ թշնամանօք արարի զայս. չպագանելս իմ երկիր ամբարտաւանին համանայ:
13 *Այլ հաճէի. և կամէի պագանել զգարշապարս ոտից նր առ 'ի փրկութի տանս իէլի:
14 *Այլ արարի զայս. զի մի՛ տաց զփառս մարդոյ. այլ քեզ միայնոյ ճշմարտիդ Այ. և ոչ երկիր պագից ումեք. բայց քեզ Տն իմում. և ոչ արարի զայս ամբարտաւանութբ:
15 *Արդ Տէր Ած աբրահամու՝ խնայեա՛ դու 'ի ժողովուրդ քո. զի յարուցեալք են 'ի վր մեր ապականիչք. զի ցանկացեալք են կորուսանել զժառանգութի քո.
16 որ էր իսկզբանէ: *Մի՛ անտես առնել զբաժինս քո. զոր դու քեզէն փրկեցեր յերկրէն եգիպտացւոց:
17 *Լուր Տր ձայնի աղօթից իմոց. և քաւիչ

լէր

լեր ժառանգութե՟ն քում. և դարձո՛
զսուգս մեր յուրախութի՟ն՝ զի կենդա
նիքս օրհնեսցուք զանուն քո մեծ Տր.
և մի՛ ապականեր զբերանն զայն. որ
օրհնէ զքեզ: *Եւ ամենայն կարդային 18
առ Տր յամ զօրութե՟ն իւրեանց. զի
մահն առաջի նոցա էր:

## Գլ: ԺԴ:

Եւ Եսթեր տիկինն ապաստանեալ 1
առ Տր և համառօտեալ էր 'ի ճիգն
մեծ: *Եւ էհան յիւրմէ զհանդերձ 2
փառաց թագաւորութե՟ն իւրոյ. և
զգեցաւ նա զքուրձ նեղութե՟ն և սգոյ.
և փոխանակ պէսպէս պատուականն
իւղոցն և խնկոցն. մոխրով և աղբով
ելից զգլուխն իւր. և զմարմին իւր 'ի
բազում աշխատութիւս խոնարհեցոյց.
և զամ զտեղի զարդու ցնծութեան
իւրոյ՝ ելից 'ի գիսոյ հերաց իւրոց:
*Եւ մատուցեալ բազում աղօթիւք 3
խնդրուածոց հայցէր 'ի Տէ ԱԾ Իէլ՝
և ասէր՝ Տր ԱԾ իմ, և թագաւոր
մեր. դու միայն օգնեա ինձ միայնումս.
որ ոչ ունիմ օգնական բաց 'ի քէն:
*Զի վտանգ մեծ է առաջի իմ: 4
*Եւ լուեալ 'ի ծննդենէ իմմէ 'ի հայ- 5
րենի ազգէն իմմէ. ‖ թէ դու Տէր
առեր զԻսրայէլ յամենայն ազգաց. և
զհարսն մեր յազգատոհմէն իւրեանց
'ի ժառանգութի քեզ յաւիտեան. և
արարեր նոցա զամ, զոր խօսեցար:
(և դարձեալ և սխալեալ յաղօթսն
իւր այսպէս ասէր. ԱԾ աբրահամու.
ԱԾ իսահակայ. ԱԾ յակոբայ՝ դու ես
օրհնեալ յաւիտեանս ամէն. ես լուէի
'ի հայրենի գրոց. զի դու Տր փոխե-
ցեր յերկրէ յերկինս զենովք՝ յապաշ-
խարութէ 'ի կեանսն յաւիտենից. ես
լուէի 'ի հայրենի գրոց Տր. եթէ դու
զնոյ 'ի ջրոց հեղեղէ ապրեցուցեր.
ես լուայ 'ի հայրենի գրոց Տր. եթէ
դու աբրահամու առաջի արանցն իւր
ոց 'ի մէջ թագաւորաց ետուր փառս.
ես լուայ 'ի հայրենի գրոց Տր. եթէ
դու զյովնան 'ի կէտ ձկանն ապրեցու
ցեր. ես լուայ 'ի հայրենի իմոց գրոց
Տր. եթէ դու զերիս մանկունսն 'ի
հնոցէ հրոյն փրկեցեր. ես լուայ 'ի հայ
րենի իմոց գրոց Տր. եթէ դու զեզե-
կիայ արքայն հրեշտակի մահու դա
տապարտեալ փրկեցեր. և 'ի կալ նր
յաղօթս առ քեզ ամ կենացն իւրոց
ողորմեցար. և շնորհեցեր և յաւելեր
'ի կեանս նորա ամս հնգետասան. ես
լուայ 'ի հայրենի իմոց գրոց Տր. եթէ
դու 'ի խնդրելն 'ի քէն Տր շուշանայ՝
աղօթիւք և խնդրուածովք՝ զաւակ

Բ.Օր. 4.20. և 6.21.

6 շնորհեցեր: ) *Եւ արդ այժմ Տէր՝
մեք մեղաք առաջի քո. և մատնեցեր
զմեզ 'ի ձեռս թշնամեաց մերոց:
7 *Փոխանակ այնր. զի փառաւորեցաք
մեք զաստուածս նց. արդար ես դու
8 Տր: *Եւ այսու ոչ շատացան 'ի ծա-
ռայելս մերում նց. այլ եդին զձեռս
իւրեանց 'ի վերայ կռոցն իւրեանց:
9 *Բառնալ զայն. զոր սահմանեաց բե
րանդ քո. և եղծանել զժառանգու-
թիս քո. և խնուլ զբերանս՝ որք օրհ-
նեն զքեզ. և շիջուցանել զփառս տան
10 քոյ՝ և զսեղանոյ սրբոյ քոյ: *Եւ բա
նալ զբերանս ազգաց 'ի փառաւորել
զոչինչ աստուածսն իւրեանց. և փա-
ռաւորել զթագաւորս մարմնաւորս
11 յաւիտենիս այսորիկ: *Մի մատներ
զվիճակ ժառանգութե քոյ 'ի ձեռս
այնոցիկ. որք ոչն իսկ են բնաւ. զի մի՛
ուրախութե ցնծասցեն 'ի վերայ կոր
ծանմանս մերոյ. այլ դարձո՛ զխոր-
հուրդս նց անդրէն 'ի նոսին. և զայն՝
որ յարուցեալ է 'ի վերայ մեր, խայտա
12 ռակեա: *Յիշեա Տէր. և մի՛ անտես
առներ 'ի ժամանակի նեղութեես մե-
րում. և զիս համարձակեցո. որ թա-
գաւորդ ես ամ թագաւորաց՝ և Տր
13 տերանց: *Եւ տուր ինձ բան դիւրին
'ի բերան. որով գտանիցեմ զշնորհս
առաջի թագաւորին. և դարձո՛ զսիրտ
նորա յատելութի թշնամւոյն մերոյ
առ 'ի կատարումն նմին և կամակցաց
14 նր: *Այլ զմեզ փրկեա բարձր բազ
կաւ քով՝ և օգնեա ինձ միայնումս՝ որ
ում ոչոք է օգնական բաց 'ի քէն Տր:
15 *Տր դու զամ զսիրտս գիտես՝ և ճա-
նաչես. և ես ատեցի զփառս անօրի-
նացս. և գարշեցեալ եմ յանկողնոյ ան
թլփատիցս. (և յամ օտար ստացուա
16 ծոցս:) *Դու գիտես Տր զկարիս իմ.
զի գարշելի է ինձ թագս. որ է 'ի վր
գլխոյ իմոյ. գարշիմ 'ի սմանէ՝ որպէս
և 'ի կապերտէ. որ լինի ըստ օրինացն
կանանց. և ոչ զգենում զնա յորժամ
17 'ի ներքս դադարիմ: *Եւ ոչ եկեր
աղախին քո 'ի սեղանոյ անտի ամանայ.
և ոչ փառաւորեցի զգինարբուս թա
գաւորին. և ոչ արբի զգինի սպան-
18 դից նոցա: *Եւ ոչ եղև ուրախ աղա
խին քո յօրէն յայնմանէ, յորմէ հետէ
մտեալ եմ առ թագաւորն՝ մինչև
ցայժմ. բայց 'ի քեզ Տր. Տր ԱԾ աբ
19 րահամու: *ԱԾ հզօր 'ի վերայ ամե
նեցունց. լո՛ւր ձայնից անյուսայս. և
փրկեա զմեզ 'ի ձեռաց. որք չարչա-
րենս զմեզ. և փրկեա զիս յերկիւղէ
անտի՝ զոր երկնչիմ:

## Գլ. ԺԵ.

4 Ե՛ւ եղեւ յաւուրն երրորդի՝ իբրեւ դադարեաց յաղօթիցն իւրոց. մերկացաւ յիւրմէ զհանդերձ սգոյն. և զգեցաւ զծիրանիսն իւր. և եղեւ երեւելի յոյժ: 5 * Եւ կարդաց նա առ տեսուչն իւր Ա՛Ծ. և փրկիչն ամի. և էառ նա զերկուս նաժիշտսն իւր զսիրելիսն: 6 * Մինն ունէր զառորոտ զգեստու նր 'ի վեր: 7 * Եւ զմիւսովն արկեալ զձեռն իւր: 8 * Եւ նա զամօթի հարեալ երկն իւր: չէր վասն գեղոյ մանկութեան իւրոյ. և երեսք նր զուարթք առ 'ի սիրել. այլ սիրտ նորա նեղեալ էր 'ի յահէ անտի: 9 * Եւ եմուտ նա ընդ ամ դրունս ապարանիցն. և եկաց նա առաջի թագաւորին. և նա նստէր յաթոռ թագաւորութեան իւրոյ. և զգեցեալ էր զպատմուճան փառացն իւրոց. որ էր ընդելուզեալ ոսկւով՝ և մարգարտով և ականակապ պատուականօք. և էր ահաւոր յոյժ: 10 * Եւ 'ի վեր համբարձ զերեսս իւր՝ զի էին կարմրացեալ փառօք. և նայեցաւ. և գլորեցաւ տիկինն. և փոխեաց նա զգոյն իւր. և եղեւ նա իբրեւ զթալկացեալ. և խոնարհեցաւ 'ի գլուխ նաժշտին: 11 * ‖ Եւ դարձոյց Ա՛Ծ զոգի թագաւորին 'ի հեզութի. և փութացեալ վաղվաղակի էջ մեծաւ երկիւղիւ յաթոռոյ անտի իւրմէ թագաւորն. և էառ զտիկինն 'ի մէջ գրկաց իւրոց. և կանգնեաց զնա. և աղաչէր՝ և մխիթարէր զնա բանիւք խաղաղութեան՝ և ասէր ցնա: 12 * Զի՛ է քեզ եսթեր տիկին. ես եղբայր քո եմ. համարձակեաց: 13 * Ոչ մեռանիս. զի 'ի միասին է իմ և քո հրամանս. մատիր դու: 14 * Եւ էառ զգաւազանն զոսկի՝ և եդ 'ի վր պարանոցի տիկնոջն. և համբուրեաց զնա: 15 * Եւ ասէ ցնա. խօսեաց ընդ իս: 16 * Եւ ասէ ցնա եսթեր. ‖ տեսի զքեզ տէր իբրեւ զհրեշտակ Ա՛Յ. և խռովեցաւ սիրտ իմ 'ի յահէ փառաց քոյ: 17 * Զի սքանչելի ես տէր իմ. և երեսք քո լի՛ք են շնորհօք: 18 * Եւ մինչդեռ խօսէր ընդ նմա. գլորեցաւ միւսանգամ յահէ թագաւորին: 19 * Եւ թագաւորն խռովեալ էր յոյժ. և ամ ծառայք նորա. (և սպասաւորք թագաւորին աղաչէին զտիկինն. և ասէ թագաւորն: զի՞նչ կամիս եսթեր. և զի՞նչ են աղաչանքդ քո. արդարեւ ասեմ քեզ. եթէ խնդրեսցես մինչեւ 'ի կէս թագաւորութեա իմոյ, տաց քեզ:)

Առակ. 21.1.

Ծննդ. 33. 10.

2 Թագ. 19. 27.

## Գլ. Ե.

4 Ե՛ւ ասէ եսթեր. օրս իմ այսնշանաւոր է. եթէ կամք իցեն արքայի՝ եկեսցես դու և համան 'ի կոչունսն իմ. զոր առնելոց եմ այսօր: 5 * Եւ ասէ թագաւորն. կոչեցէք վաղվաղակի զհամանն. և կատարեսցուք զբանն եսթերայ: Եկին երկոքեան նոքա 'ի կոչունսն. զոր ասաց եսթեր: 6 * Եւ մինչդեռ ըմպէին զգինի. և ասէ արքայն ցեսթեր. զի՞նչ կամիս տիկին եսթեր. տաց քեզ՝ զորինչ և խնդրեսցես: 7 * Եւ ասէ եսթեր. աղաչանք իմ, 8 և խնդրուածք իմ այս են: * Եթէ գտի ես շնորհս առաջի արքայի. եկեսցէ արքայ և համան 'ի կոչունս. զոր առնեմ ձեզ վաղիւ՛ միւսանգամ: 9 * Եւ ել համան յերեսաց արքայի ուրախութեամբ մեծաւ՝ և զուարթութբ. իբրեւ ետես համան զմուրթքէ զայրն հրէայ 'ի տան թագաւորին, 10 բարկացաւ յոյժ: * Եւ եմուտ նա 'ի տուն իւր. կոչեաց զսիրելիս իւր. և 11 զօվսարրայ զկինն իւր: * Եւ եցոյց նց զմեծութի և զփառս իւր՝ զոր ետ նմա թագաւորն. և որպէս արար զնա առաջին 'ի թագաւորութեան իւրում: 12 * Եւ ասէ համան. ոչ կոչեաց տիկինն եսթեր 'ի կոչունս իւր ընդ արքայի զոք՝ բաց յինէն. և դարձեալ առ վաղիւ՛ ես հրաւիրեաց զիս: 13 * Եւ արդ՝ այս ոչ թուի ինձ հաճոյ. յորժամ տեսանեմ զմուրթքէ զայր հրէայ 'ի տան 14 թագաւորին: * Եւ ասէ ցնա զօվսարրա կինն իւր՝ և սիրելիք իւր. հրամանն տուր հատանել քեզ փայտ մի յիսուն կանգուն. և ընդ առաւօտն ասասցես արքայի. և կախեսցի մուրթքէ զփայտէն. և դու մտանիցես 'ի կոչունսն հանդերձ արքայիւ՛. և ուրախ լինիցիս ընդ նմա. և հաճոյ թուեցաւ համանայ բանն. և պատրաստեցին զփայտն:

## Գլ. Զ.

1 Ե՛ւ Տր Ա՛Ծ մերժեաց զքուն յարքայէ զգիշերն զայն. և ասէ ցդպրապետն իւր. բերել առաջի իւր զգիր 2 հրովարտակին. և կարդալ: * Եւ եգիտ նա զհրովարտակն. զոր գրեալ էր վն մուրթքէի. եթէ որպէս պատմեաց վն երկոցունց ներքինեացն նր. յորժամ պահէին զապարանս թագաւորին. և կամէին սպանանել զարքայ 3 արտաշէս: * Եւ ասէ թագաւորն. և զի՞նչ շնորհս և կամ փառս տուաք մուրթքէի. և ասեն սպասաւորքն արքայի.

արա_

արարեր և ոչինչ նմա՝ յորժամ հասեր
'ի վերայ խնամոց հաւատարմութեան
առ քեզ ։ և ընդ առաւօտն եկին 'ի
գաւիթ թագաւորին ։ *Եւ ասէ ար_ 4
քայ· ո՞վ է 'ի գաւիթիս · և Համան եկն
և եմուտ հրաման առնուլ 'ի թագաւո
րէն · զի կախեսցէ զՄուրթքէ զփայ_
տէն՝ զոր պատրաստեաց ։ *Եւ ասեն 5
սպասաւորքն արքայի · ահաւասիկ Հա
մանն արտաքոյ է ։ և ասէ արքայ · կոչես
ցի 'ի ներքս ։ *Եւ ասէ թագաւորն 6
ցՀամանն · զինչ արարից ես առնն · զոր
ես կամիմ փառաւորել ։ և խորհեցաւ
Համան · և ասէ 'ի միտս իւր · զո՞վ կա_
մի արքայ փառաւորել՝ եթէ ոչ զիս ։
*Եւ ասէ ցարքայ · զայրն զայն՝ զոր 7
արքայ կամի փառաւորել ։ *Բերցեն 8
զպատմուճանն զարքունի· և զերիվարն
յորում արքայ հեծանէր · և տացեն
առն միում սիրելոյն արքայի 'ի փա_
ռաւորաց անտի ։ *Եւ զգեցուսցեն 9
զպատմուճանն առնն այնմիկ · զոր ար
քայն սիրէ · և հեծուսցեն զնա յերի_
վարն արքունի · և քարոզ կարդասցի
ընդ հրապարակս քաղաքին · և ասաս
ցէ՝ այսպէս եղիցի ամենայն առն· զոր
արքայ փառաւորէ ։ *Եւ ասէ ար_ 10
քայ ցՀամանն · բարւոք խօսեցար· զայդ
արասցես Մուրթքէի հրէի՝ առն խնա
մակալի 'ի տան իմում · և մի՛ վրի_
պեսցի բան մի 'ի բանիցքոց՝ զոր խօսե
ցարդ ։ *Եւ էառ Համան զպատմու_ 11
ճանն՝ և զերիվարն արքունի · և զգե_
ցոյց զՄուրթքէ · և հեծոյց զնա յերի_
վարն · և էանց նա ընդ փողոց քաղա_
քին · և քարոզն աղաղակէր՝ և ասէր ·
այսպէս լիցի ամ մարդոյ· զոր կամիցի ար
քայ փառաւորել ։ *Եւ դարձաւ Մուրթ 12
քէ յապարանսն արքունի · և Համան
գնաց 'ի տուն իւր դլխարկեալ լի տրտ
մութեամբ ։ *Եւ պատմեաց Համան, որ 13
զինչ էանց ընդ նա, զոմասրրայի կնոջ
իւրում, և սիրելեաց իւրոց ։ և ասեն
ցնա սիրելիքն իւր՝ և կին իւր · եթէ
յազգէ հրէից էր Մուրթքէ · և եղե
իշխան · հնազանդեալ նմա · զի ոչ կա
րես դու նմա հաստուցանել · քանզի Տր
Բ՛ծ ընդ նմա է ։ *Եւ մինչդեռ նոքա 14
խօսէին, եկին երկու ներքինիքն կո_
չել զՀամանն 'ի ճաշ տիկնոջն ։

## ԳԼ: Է:

Եւ՛ եմուտ թագաւորն, և Համան 1
'ի գինեխումս տիկնոջն ։ *Եւ ա_ 2
սէ արքայն ցեսթեր · յաւուրն երկրոր
դի մինչդեռ ըմպէին գինի · զի՞ է քեզ
եսթեր տիկին· և զինչ է խնդրուածքդ
քո՝ և կամ աղաչանքդ · եղիցի քեզ մին
3 չև 'ի կէս թագաւորութեան իմոյ ։ *Եւ
պատասխանի ետ եսթեր՝ և ասէ· եթէ
գտի ես շնորհս առաջի արքայի· տացի
անձն իմ խնդրոյս իմում · և բան աղա
4 չանացս իմում ընդունելի լիցի ։ *Զի
զի վաճառեցաք ես և ժողովուրդ իմ՝
'ի կորուստ՝ և 'ի ծառայութիւն՝ և 'ի
յափշտակութիւն մեք և որդիք մեր · և
ես ոչ հաւատացի ։ արդ ոչ է առնն բան
սարկաւի արժան 'ի տան թագաւորի
5 լինել ։ *Եւ ասէ արքայն՝ ո՞վ է՝ որ իշ
6 խեաց առնել զիրս զայս ։ *Եւ ասէ ես
թեր · այրս թշնամի Համան· որ չարս է՝
սա արար ։ և Համան զահիհարեալ խռո
վեցաւ յոյժ՝ յարքայէ և 'ի տիկնոջէն ։
7 *Եւ յարեաւ թագաւորն 'ի ճաշոյ ան
տի · և եմուտ 'ի ծաղկոցն արքունի · և
Համան կամէր հրաժարել 'ի տիկնո_
8 ջէն · քանզի էր յերկիւղի մեծի ։ *Եւ
դարձաւ թագաւորն 'ի ծաղկոցէ ան
տի· և Համան անկեալ առաջի գահոյի
տիկնոջն՝ աղաչէր զնա ։ և ասէ թա_
գաւորն · արդ յայդչափ հասեր · զի
կամիս զկին իմ բռնադատել 'ի տան
իմում ։ և Համան իբրև լուաւ · զահի
զամօթի հարեալ անկաւ 'ի վր երե_
9 սաց իւրոց ։ *Եւ ասէ բուգաթան մի
'ի ներքինեաց անտի ցարքայ· ահա Հա
մանն փայտ մի կազմեաց 'ի տան իւր_
ում յխուն կանգնեան · և ասէ թա_
10 գաւորն՝ խաչեսցի 'ի վր նր ։ *Եւ կա_
խեցին զՀամանն զփայտէն · զոր պատ_
րաստեաց Մուրթքէի · և ապա թագա
ւորն դադարեաց 'ի բարկութէ իւրմէ ։

## ԳԼ: Ը:

1 Եւ՛ յայնմ աւուր պարգևեաց ար_
քայն եսթերայ զգանձսն Համա
նայ քսու՛ի · և զՄուրթքէ կոչեալ թա
գաւորին · քանզի պատմեաց նմա ես_
2 թեր· եթէ ազգական իմ է ։ *Եւ էառ
թագաւորն զմատանին, զոր էհան 'ի
Համանայ · և ետ զնա Մուրթքէի · և
կացոյց եսթեր զՄուրթքէ 'ի վր ամ
3 ընչից Համանայ ։ *Եւ յաւել ևս խօ_
սել ընդ արքայի· և անկաւ առաջի ոտից
նր · և աղաչէր · զի մի՛ մինչև 'ի վախ_
ճան լիցի պատուհաս հրէիցն՝ զոր Հա
4 սոյց Համան ։ *Եւ ձգեաց արքայ աւ
եսթեր զգաւազանն ոսկի · և յարեաւ
եսթեր երթալ 'ի սենեակն արքայի ։
5 *Եւ ասէ եսթեր · եթէ կամք իցեն
քեզ · և գտեալ է իմ շնորհս առաջի
քո · առաքեսցէ արքայ հրեշտակս · և
դարձուսցէ զհրովարտակսն· որք գրե
ցանն 'ի Համանայ կորուսանել զհրէ_
այսն · որք են 'ի քում թագաւորութեան ։
6 *Եւ զիա՞րդ կարիցեմ տեսանել զչա_
րիս

րիս ժողովրդեան իմոյ. և կամ զիարդ կարացից ապրիլ ես 'ի բնակչաց հայրենի գաւառին իմոյ։ 7 *Եւ ասէ Թագաւորն ցԵսթեր. իսկ եթէ զամ ինչս և ղստացուածս համանայ ետու, և զնոր հեցի քեզ. և զնա կախեցի զփայտէ. զի ձեռն էարկ նա 'ի հրեայս. (զինչ այլ ես ինչ խնդրես։) 8 *Գրեցէք արդ դուք հրամանաւ բանի իմոյ. որպէս և կամք իցեն ձեզ. և կնքեսցի մատանեաւս իմով. զի որչափ և գրեք, իմ արքայի հրամանաւ տուեալ է. զի մի՛ոք գտցի դիմակաց այնց հրամանաց։ 9 *Եւ կոչեցին զդպիրսն յառաջնում աւուրն յամսեանն նիսանու որ է արեգ. 'ի քսաներորդի յերրորդի ամի. և գրեցաւ՝ ամ՟ ետ հրամանն աշխարհամար դպրացն. որք միանգամ իշխանք և կուսակալքն էին 'ի գաւառս գաւառս. նախարարացն. և իշխանաց նախարարաց. 'ի հնդկաց մինչև յեթէովպացիս հարիւր քսան և եօթն կուսակալացն. ըստ գաւառաց գաւառաց յիւրաքանչիւր լեզուս նց։ 10 *Եւ գրեցաւ հրամանաւ Թագաւորին. և կնքեցաւ մատանեաւ նորա. և առաքեցին զհրովարտակն 'ի ձեռն հրեշտակաց. որպէս զի կացցեն հրէայք ողջ և անարատ։ 11 *Իւրեանց օրինօք յամ՟ քաղաքի. օգնականք և թէկունք լինել առ 'ի հատուցանել նոցա զփոխարէն թշնամեաց իւրեանց. ամ՟ և կամիցին յաւուր միում ընդ ամ՟ տեղիս թագաւորութե իմոյ։ 12 *Յաւուր երեքտասաներորդի ամսոյն ադարայ. և այս էր պատճէն հրովարտակին. զոր կնքեալ էր մատանեաւ թագաւորին։

## Գլ. ԺԶ.

‖ Ա Էր. 1. 1.

1 Թագաւոր մեծ արտաշէս. ձեզ՝ որք էք 'ի կողմանս հնդկաց. և եթէովպացւոց հարիւր քսան և եօթն գաւառաց նախարարացդ և իշխանացդ. և որք 'ի մերում մօտ և 'ի խորհրդեան մերումէք. ողջոյն։ 2 *‖Բազումս բազում անգամ 'ի բարերար քաղցրութեց ատի ստէպ ստէպ պատուեալք աւելի իմն՝ և մեծամեծ խորհուրդս խորհեցան։

‖ Ա Էր. 3. 10.

3 *Եւ ոչ միայն զմեր հնազանդեալս խնդրեն չարչարել. այլ և ոչ իւրեանց յանդգնութբն՝ և մեծութեց կարեն համբերել. և յիւրեանց բարերարսն ձեռնարկեալ մեքենայեն։ 4 *Եւ զգովութիւս ոչ միայն 'ի մարդկանէ ատի բառնան, այլ 'ի չմարթնոցն գովութիւս բարձրացեալ յղփացեալ՝ ոչ գիտեն. որոց ամ՟ տեսուչն յաւերժ ամ՟ է. և ատելութի իմն չարութե համարին փախչիլ 'ի դատաստանէն։ 5 *Բազում անգամ զբազումս. որք յիշխանութեն կարգեալ են. որոց հաւատարմութե զգործ 'ի ձեռն առեալ է. հանդիստ և մխիթարութի անձանց համարին առ 'ի հեղուլ զարիւն ամբիծ։ 6 *Նման որոյ կրեաց իսկ զանարժան պատուհասն՝ չարակամութեամբ ստութե առանց խորհրդոյ ամբաստանութի մատուցանել մեզ. վասն այսորիկ որք 'ի մէնջ պատուեցան. այլ արդ զդուշանալ արժան է։ 7 *Ոչ այնչափ միայն, որչափ և յառաջնումն նուագին ուսուցաք ձեզ առնել. որչափ և գրեցան ձեզ առանց սրբութե որ եղև դ այնոցիկ. որք անարժանութեամբ զօրացեալք էին ժառանգութբք իւրեանց։ 8 *Արդ հայեցեալ ձեր 'ի թագաւորութիւս՝ առանց խռովութեց ամ՟ մարդկան շնորհեցաք կեալ խաղաղութբ։ 9 *Արդ արարէք զդարձ փոխարինի 'ի նոյն. և որ առաջին հրամանն էր. այն 'ի բաց մերժեսցի. և հեզութբ՝ և խաղաղութբ ընդ առաջ եկանել։ 10 *‖Եւ մի որպէս համանն ամադովդեանց մակեդոն. ճշմարտութեց օտար լեալ 'ի զաւակէն պարսից. և յոյժ ատեցեալ և մերժեալ 'ի մերմէ քաղցրութենէ ատի։

‖ Ա Էր. 3. 1.

11 *Եւ օտարացեալ. զոր ունիմք առ ամ՟ ազգս մարդասիրութիւս. այնչափ ես. զի և կոչեցաւ մեր աթոռակից. որում երկիր պագանէին ամենեքեան. որք են ընդ մերով իշխանութբս. զոր յերկրորդ աթոռս իմում նստուցեալ պատուեցաք։ 12 *Եւ ոչ հանդարտեաց նա յիւրում ամբարտաւանութեն՝ մեքենայել ջանացաւ. յիշխանութե ատի զմեզ 'ի բաց մերժել. և յոգւոյ ատի մերոյ։ 13 *Եւ զմեր փրկիչն՝ և զերախտաւորն զմուրթքէ. և զչքնաղ և զանարատ. զհաւատար թագաւորութես իմոյ զեսթեր, ամ՟ ազգաւն իւրով հանդերձ՝ բազում զուր՝ հնարիւք մեծ 'ի վերայ եդեալ՝ առանց պատճառանաց խնդրեաց զնոսա 'ի կորուստ։ 14 *Օրինաւ այսու օրինակաւ խորհեցաւ առնել զիշխանութիւն պարսից յանապատ աւերակ. և 'ի մակեդոնացիս անդրէն դարձուցանել։ 15 *Արդ մեք 'ի բազմահնար սատակչէ յայնմանէ. որք մատնեցան 'ի կորուստ հրեայքս. տեսանեմք զի ոչ ինչ գործք չարութե 'ի սոսա գտանին. և արդար օրինաց վարիչք։ 16 *Եւ են իսկ սոքա որդիք բարձրելոյն մեծի կենդանւոյն Այ. որ ուղղէ զմեր և զազգիս մերոյ զթագաւորութիս յիւրմէ բարեսէր առատութենէն։ 17 *Եւ արդ բարւոք արարէք. զի ոչինչ ձեռնամուխ

որ համ_ նէայ 'ի կորուստ զհրէայս

մուխ եղիցի ըստ հրամանի գրոց հրո-
վարտակայն համանայ. որք առաքե-
ցան առ ձեզ: * Նզովի նա ինքն որ զայս 18
յինքենէ գործեաց մերձ 'ի դրունս
սիասացւոց քաղաքիս. ամ̃ ընտանեօք
իւրովք համդերձ 'ի փայտ ելեալ է.
զարժանի զվրիժուց զհատուցումն
ամենակալ յանձն իւր ընկալեալ յամե-
նակալէն Այ̃. որ հատոյց նմա վաղ
վաղակի զդատաստանն: * Եւ զպատ 19
ճէն հրովարտակիս այսորիկ յառաջ
համեալ՝ եդեալ՝ և տարածեալ ամ̃
պղուշութբ՝ եթէ հրէից վարել զիւր
եանց օրէնսն: * Արդ քաջալերեսցին 20
նոքա. զի ոք̃ 'ի ժամանակի նեղութեն
ստիպէին զնս̃ չարչարել. հատուսցեն
զհատուցումն 'ի թշնամիս իւրեանց.
յերկոտասաներորդ և յերեքտասան
երորդ ամսեանն ադար: * Ի նմին աւ 21
ուր. զի զայս իսկ ամենազօրն Այ̃ փո
խանակ սատակելոյ ընտրեալ ազգին
արար նոցա ուրախութի: * Եւ դուք 22
այժմ 'ի կարգս ձեր՝ և 'ի տօնս տարե
կանաց ձերոց՝ և յաւուր նշանաւորի
ուրախութիս արասջիք: * Զի ոք̃ 23
ցայժմ, և արդ զկնի այսորիկ ուրա-
խութի եղիցի ձեզ՝ և վաստակաւո-
րաց մերոց պարսկաց. և որք 'ի մեր
վր̃ զխորհուրդ մահու խորհէին, նշ̃
յիշատակ կորստեան: * Ամ̃ քաղաքք 24
և ամ̃ գաւառք. որք ոչ առնիցեն ըստ
բանից մերոց այսոցիկ. սրով՝ և հրով
և բարկութբ մաշեսցին. ոչ միայն 'ի
մարդկանէ անապատ լիցին. այլ և գա
զանք երկրի՝ և թռչունք երկնից՝ մին
չև յաւիտեան 'ի բաց մերժեալք ըն-
կեսցին:

## ԳԼ: Ը:

Եւ պատճէնք հրովարտակացն 13
ցուցեալք կարդացեալք լիցին
առաջի ամ̃ աշխարհ՝ յիմում թագաւո-
րութենս. պատրաստել համդերձեալ
զհրէայսդ յաւուրս յայսմիկ կորուսա
նել զթշնամիս դոցա: * Եւ հրեշ- 14
տակքն ելին փութով կատարել՝ որ 'ի
թագաւորէն կարգեալ էր. և գրեցաւ
հրամանն՝ և եդաւ 'ի Սուսա քաղաքի:
* Եւ մուրթքէ ել. և զգեցեալ էր ըզ 15
պատմուճանն զարքունի. և պսակ ու-
նէր ոսկի. և թագ 'ի բեհեզոյ և 'ի ծի
րանւոյ. և տեսին՝ որք 'ի Սուսա քաղա
քի էին. և ուրախ եղեն յոյժ: * Եւ 16
լոյս մեծ ծագեցաւ. և ուրախութի
յոյժ: * Ըստ քաղաքի և 'ի գաւառս. 17
ուր և ընթեռնուին զհրամանս ար-
քունիս, խնդութի և ուրախութի լի-
նէր նոցա. և բազումք 'ի հեթանոսաց

կը

դառնային 'ի հրէութի անդր. և թլ
փատէին վասն ահին հրէից:

## ԳԼ: Թ:

1 Ի յերկոտասաներորդ ամսոյն՝ և
յերեքտասաներորդ աւուրն,
որ է ադար. եկն էհաս հրովարտակն՝
որ գրեալ էր յարքունուստ. 'ի նմին
աւուր կորնչէին, որք մնացամ դիմա
2 դարձք լինէին հրէիցն: * Եւ ոչոք էր
որ ընդդէմ դառնայր նց̃ ամենեին.
3 քանզի զահի հարան 'ի նոցանէ: * Զի
իշխանքն. որք 'ի վերայ նախարարացն
նոցա կացեալք էին. և կուսակալք՝ և
արքունի դպրապետք պատուէին ըզ
հրէայսն: զի ահն մուրթքեի կայր 'ի
4 վերայ նց̃: * Քանզի հրամանն տու-
եալ էր հրովարտակաւ թագաւորին՝
անուանել զնա ընդ ամ̃ թագաւո-
6 րութին իւր: * Եւ 'ի Սուսա քաղա-
քի կոտորեցին հրէայքն արս իբրև
7 հինգհարիւր: * Զփարակն. և զնես
տէն. և զդմփոմն. և զփաղգայ:
8 * Եւ զփարդաթայ. և զբարեայ. և
զսարաբաքայ. և զմարմասիս:
9 * Եւ զարուփէսն. և զարսէսն. և զար
10 փուդեթան: * Զորդիսն համանայ
որդւոյն ամադաթայ, որդւոյն
11 բարդեայ թշնամւոյն հրէից: * Եւ
յափշտակեցին 'ի նմին աւուր. և մա
տուցին զթիւն արքայի զկորուսելոցն
12 'ի Սուսա քաղաքի: * Եւ ասէ արքայ
ցեսթեր. կորուսին հրէայքն 'ի Սուսա
քաղաքի արս հինգ հարիւր. և շուրջ
զքաղաքաւն որչափ ես առաւել յոյժ
կարծես. արդ զինչ ես կամիցիս՝ զի ա-
13 րարից քեզ: * Եւ ասէ ցարքայ ես-
թեր. տացէ հրաման արքայ հրէիցն
այնպէս առ վաղիւ. զի զորդիսն հա-
14 մանայ կախեսցեն: * Եւ ետ հրաման
առնել այնպէս. և էհան արտաքս առ
հրէայսն՝ որք 'ի քաղաքին էին՝ զմար-
մինս որդւոցն համանայ կախել 'ի փայտ:
15 * Եւ ժողովեցան հրէայքն 'ի Սուսա
յաւուրն չորեքտասաներորդի ադա-
րայ. և կոտորեցան արք երեքհարիւր. և
16 ոչինչ յափշտակեցին: * Եւ որք մնա-
ցեալքն էին 'ի հրէից անտի. որք ը̃ թա
գաւորութեն նորա էին ժողովեցան. և
անձանց իւրե̃ց օգնէին. և հանգեան
նոքա. և դադարեցին յայնցանէ՝ որք
պատերազմէին ընդ նոսա. զի կորու-
սին 'ի նոցանէ իբրև հինգ հազար ոգի.
17 * Յերեքտասաներորդի ամսոյն ադա
րայ. և ոչինչ յափշտակեցին. և հան-
գեան նք̃ յերեքտասաներորդ աւուրն
նորին ամսոյ. և կարդացին զօրն զայն
օր հանգստեան՝ խնդութ̃ և ուրախու-
թե̃:

Եւ կոտորե-
ցին զարս

թ՟բ ։ 18 *Եւ հրէայքն՝ որք էին ՚ի սուսա քաղաքի, ժողովեցան ՚ի չորեքտասաներորդ աւուր ամսոյն ․ և հանգեան․ և կարգեցին զհնգետասաներորդ օրն ցնծութեան և ուրախութեան ։ 19 *Վ՟ն այսորիկ հրէայքն ընդ ա՟մ երկիր՝ և ընդ գաւառս առնէին տօնս ուրախութեան ․ զօրն չորեքտասաներորդ ադարայ ամսոյն, օր բարի ուրախութեան ․ և առաքէին նուէրս այր ընկերի իւրում․ և բնակիչքն, որք բնակեալ էին ՚ի մայրաքաղաքին՝ զհնգետասաներորդ զօրն ադարայ առնէին նոյնպէս՝ բարեաց և ուրախութեան ։ 20 *Եւ գրեաց մուրթքէ զբանս զայս ՚ի գիրս մատենից․ և առաքեաց հրէիցն՝ որք էին ընդ իշխանութ՟բ արտաշէսի արքայի ․ մերձաւորաց և հեռաւորաց ։ 21 *Հաստատել կարգել զաւուրս զայսոսիկ առնել տօն ուրախութեան զչորեքտասաներորդ և զհնգետասաներորդ աւուրն ադարայ ։

զօրն

22 *Վասնզի յայսմ երեւումն աւուրս հանգեան հրէայքն ՚ի թշնամեաց իւրե՟ց․ և յամսեանն, յոր դարձաւ սուգ նո՟ց յուրախութիւն ․ այսինքն է ադար ․ և ՚ի ցաւոյն՝ որ դարձաւ յուրախութիւն ․ այսինքն է ադար ․ կատարել զաւուրան զայնս՝ աւուրս հարսանեաց ։ 23 *Որպէս և գրեաց նոցա մուրթքէ ։ 24 *Եթէ ո՟ղ ‖ համան ամադութեանց մակեդոնացի պատերազմ տայր ընդ նոսա ։ որպէս էհան նոցա թիւ համարոյ ․ և վիճակ կորուսանելոյ զնոսա ։

‖ Վեր․ 3․ 7․

25 *Եւ կամ որպէս եմուտ առ արքայն՝ և խնդրէր կախել զմուրթքէ զփայտէն․ և որչափ չարեաւ ՚ի գործ արկեալ ածէր ՚ի վ՟ր հրէիցն զչարիսն․ և եկին՝ մթերեցան՝ լցան չարիք նորա․ և կախեցաւ նա՝ և որդիք նորա զփայտէ ։ 26 *Վ՟ն այնորիկ կարգեցան աւուրքս այսոքիկ պահոց․ վասն զի և ժամանակն իւրեանց բարբառովն ասի պահք վ՟ն բանից հրովարտակիս այսորիկ ․ և որ ինչ միանգամ էանց ը՟ն նոսա ․ և որինչ եղև ն՟ց ։ 27 *Հաստատեաց՝ կացոյց, և ընդունէին զայս հրէայքն յանձինս իւրեանց ․ ուսուցանէին և որդւոց իւրե՟ց ․ և այլ ինչ որ յաւելոյր ՚ի նոսա ․ և զամին ոչ այլափոխէին ։ 28 *Եւ աւուրքս այսոքիկ ՚ի յիշատակ լինէին յազգս յազգս․ ՚ի քաղաքս և ՚ի գաւառս․ և աւուրքն այնոքիկ պահոց պատուէսցին․ և յիշատակ ն՟ց մի պակասեսցի յազգէ մինչև յազգ ։ 29 *Եւ գրեաց եսթեր դուստր ամինադաբայ․ և մուրթքէ այր հրէայ․ և հաստատեցին զպահպանութիւն հրովարտակիս այսորիկ ։ 31 *Եւ մուրթքէ և եսթեր կացուցին իւր՟ց առանձինն ․ և ուխտեցին իւրեանց զուխտ․ և խորհուրդ կատարեցին ։ 32 *Եւ եսթեր երդմամբ հաստատեաց մինչև յաւիտեանս ժամանակաց․ և գրեցաւ ՚ի յիշատակս ։

## Գլ ։ Ժ ․

1 Եւ գրեաց թագաւորն յիշխանութ իւրում ընդ ծով և ընդ ցամաքս ։ 2 *Զզօրութիւն իւր․ և զքաջալերութիւն իւր ․ և զմեծութիւն և զփառս թագաւորութեան նորա ․ ահաւասիկ գրեալ է ՚ի գիրս յիշատակաց պարսից և մարաց ։ 3 *Եւ էբրև առնոյր մուրթքէ զթագաւորութիւն յարտաշէսէ ․ և էր մեծ ՚ի թագաւորութեան իւրում․ և փառաւորեալ՝ և սիրեցեալ էր ՚ի հրէից անտի․ և պատմէր զկրօն եղեալն ա՟մ ազգին իւրում ։ 4 *Եւ ասէ մուրթքէ ․ 5 յԱ՟յ եղև այս ։ *Վ՟ն զի յիշեաց զտեսիլ երազոյն՝ զոր ետես վասն բանիցս այսոցիկ՝ զի ոչ զանց եղև ՚ի նոցանէ բան մի ։ 6 *Փոքրիկ աղբիւրն, որ եղև գետ մեծ․ և էր լոյս՝ և արև․ և ջուր յոյժ․ եսթեր է գետն․ ը՟ն որում ամուսնացաւ թագաւորն․ և արար զնա տիկին ։ 7 *Եւ երկու վիշապքն՝ ես եմ, և 8 համան ։ *Եւ ազգք․ որք ժողովեալք էին կորուսանել զանուն հրէիցն ։ 9 *Որ է իմ․ և կարդացին առ Ա՟ծ․ և կեցին․ և ապրեցոյց Տ՟ր զժողովուրդ իւր․ և փրկեաց զմեզ Տ՟ր յա՟մ չարեացն մերոց ․ և արար Ա՟ծ զնշանս և զարուեստս իւր մեծամեծս ․ որք ոչ եղեն 10 երբէք ՚ի հեթանոսս ։ *Վ՟ն այսորիկ արար վիճակս երկուս՝ զմին ժողովրդեան Ա՟յ ․ և զմին ա՟մ հեթանոսաց ։ 11 *Եւ եկին այս երկու վիճակքս ՚ի ժամու և ՚ի ժամանակս ․ և յաւուրն դատաստանի առաջի Ա՟յ յամենայն հե 12 թանոսս ։ *Եւ յիշեաց Ա՟ծ զժողովուրդ իւր․ և արդարացոյց զժառան 13 գութիւն իւր ։ *Եւ եղիցին նոցա աւուրքս այսոքիկ յամսեանն ադարայ ՚ի չորեքտասան աւուրս․ և զհնգետասաներորդ ՚ի նմին ամսոյ ․ ժողովուրդքն համդերձ ցնծութ՟բ և ուրախութ՟բ առաջի Ա՟յ՝ ըստ ազգս յաւիտենից ՚ի ժողովրդեանն իսրայելի ։

## Գլ ։ ԺԱ ․

1 Յամին չորրորդի թագաւորութեան պտղոմեայ և կղէոպատրեայ եմոյծ դոսիթէոս քահանայ և ղևտացի․ և պտղոմէոս որդի նորա ․ զաղնուհական գրեալ հրովարտակն ․ զփրուրեանն․ որ անուանի լուսիմարքոս ․ պտղոմեայ զորդի այն որ յերուսաղէմ ։



Եւ Մատաթի 'ի նախանձ բարկութե՛ բորբոքեալ, զայն ուրացեալն եհար առընթեր զոհարանին. 1. Մակ. 2. 24



Եւ էր յաւուր ընդդէմ Նիկանովրայ. և բաղխեցան երկոքին ճակատքն ընդ միմեանս. 1. Մակ. 7. 42.

# ԳԻՐՔ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ
# ՄԱԿԱԲԱՅԵՑՒՈՑ.

Գլուխ Առաջներորդ ։

1 ԵՒ ՅԵՏ ՀԱՐՈՒԱԾՈՅՆ աղեքսանդրի կայսեր մակեդոնացւոց. որդւոյ փիլիպպեայ. որ խաղաց գնաց նա յերկրէն քետացւոց՝ 'ի ժամանակի զի հարկանէր զդարեհ արքայ պարսից և պարթևաց. և որ թագաւորեաց իսկ յետ նորա 'ի վերայ յունաց աշխարհին՝ և հոռոմոց ։ 2 * Եւ զօրաժողով լինէր մեծաւ պատերազմաւ. զամուրս հարկանէր՝ և զթագաւորս 'ի սուր սուսերի իւրոյ սատակէր ։ 3 * Եւ առնոյր զօր բազում ազգաց հեթանոսաց. և սարսէր երկիրս ամենայն առաջի նորա ։ 4 * Զօրաժողով լինէր զօրօք բազմօք, և հաստանէր 'ի վերայ երկրի՝ յամենայն պետութեանց զօրութե՛ ։ 5 * Եւ զաշխարհս ամենայն 'ի հարկի կացուցանէր ։ 6 * Եւ յետ այսր անկանէր 'ի մահիճս իւր՝ և զգիտա մահու ջերմնիւր. և իբրև 7 ետես՝ եթէ մեռանի ։ * Կոչեաց նա զծառայսն զդայեակորդիսն իւր զեր-րեսին փառաւորեալսն 'ի նմանէ. որք ընդ նմա իսկ սնեալ էին 'ի մանկութենէ. և բաժանեաց և ետ նոցա զարքայութի՛ն իւր. մինչդեռ ինքն կենդանի էր ։ 8 * Եւ թագաւորեաց աղեքսանդրոս 9 ամս երկոտասան՝ և մեռաւ ։ * Հաստատեցան՝ և կացին յիւրաքանչիւր տէ-10 րութեն դայեակորդիքն իւր ։ * Թագ-կապեցին իւրաքանչիւր յետ մահուն նր. և որդիք նց ամս բազումս. բազմացուցին զանօրէնութի՛ս՝ և լցին զերկիր

չարեօք իւրով։ *Ի նոցանէ բղխիւր ար 11
մատ չարի. չարաւխիղ դառնութե անօ
րէնն անտիոքոս. որդի անտիոքայ ար
քայի. որ էր մնացեալ 'ի պատանդս 'ի
Հռովմ քաղաքի. և թագաւորեաց նա
յամին հարիւրորդի երեսներորդի
եօթներորդի թագաւորութեն յունաց։
*Յաւուրս ժամանակացն այնոցիկ ե֊ 12
լին՝ զատան յորդւոցն իղի արք անօ֊
րէնք. 'ի բանս պատիրս, 'ի բանս հրա֊
պուրանաց արկին զբազումս՝ և ասեն.
եկայք՝ երթիցուք՝ և դաշինս կռես֊
ցուք՝ ուխտ դիցուք ընդ ամ ազգս հե֊
թանոսաց. որք շուրջ զմեօք բնակեալ
են. զի յաւուրցն ժամանակաց հետէ՝
յորմէ անջատաք. մեկնեցաք մեք 'ի
նոցանէն. չարիք բազումք՝ կարևորք
եկին՝ և հասին 'ի վերայ մեր։ *Հաճոյ 13
թուեցաւ բանն 'ի միտս բազմաց։
*Յօժարեցան ոմանք 'ի ժողովրդենէ 14
անտի երթալ յանդիման լինել թա֊
գաւորին. և ետուն իշխանութի թա֊
գաւորն, գործել զամ իրաւունս ըստ
օրինացն հեթանոսաց։ *Եւ շինեցին 15
հրապարակս մեհենից յեէմ ըստ օրի֊
նացն հեթանոսաց։ *Եւ հասատե֊ 16
ցին իւրով օրէնս անթլփատութե. և
ապստամբք եղեն յուխտէ կտակարա
նացն սրբութե. զուգեցան ընդ հե֊
թանոս. յօժարեցան՝ կանխեցին առ֊
նել զչարիս։ *Եւ իբրև յաջողեցաւ 17
թագաւորութիւն առաջի անտիոքայ.
եդ 'ի միտ իւրում նա՝ թագաւորել և
'ի վր թագաւորութե երկրին եգիպ
տացւոց. միաբանել զերկոսին թագա
ւորութիւնս։ *Մտեալ խաղաց՝ գնաց 18
նա 'ի վր երկրին եգիպտացւոց զօրօք
բազմօք՝ կառօք և փղօք. և նաւօք
բազմօք։ *Տալ պատերազմ ընդ պտղո֊ 19
մեայ թագաւորին եգիպտացւոց. 'ի
պարտութի մատնեցաւ պտղոմէոս յե
րեսաց նորա. և փախստական լինէր
առաջի նր. և յայնմանէ բազումք վի֊
րաւորք անկանէին։ *Նսպատակ 20
սփռէր ընդ աշխարհն ամենայն անտի֊
ոքոս. վաղ հասանէին. արագ արագ
զօրն ժողովէին. և առնուին զամուրս
ամ երկրին եգիպտացւոց։ *Եւ յետ 21
հարուածոյն եգիպտացւոց դարձաւ
անտիոքոս յամին հարիւրորդի քա֊
ռասներորդի։ *Եկն, էհաս նա 'ի վր 22
քաղաքին եէմացւոց մեծաւ պատե֊
բազմաւ։ *Եւ եկն եմուտ 'ի սրբու֊ 23
թի անդր հպարտութբ բազմաւ. և
էառ նա զսեղանն ոսկի. և զաշտա֊
նակն լուսոյ. և զամ կահ գանձին.
զսեղանն պատարագաց. զսկիհսն. և
զտաշտսն. և զխնկաղացսն. և զվարս

գոյրսն ամ. զպսակսն, և զզարդն ոս֊
24 կի։ *Զառաջինն դիմեաց յանդի֊
ման տաճարին. կեղևեաց, և ձուլեաց
զամ. էառ նա զարծաթն և զոսկին.
զգէնն. և զզարդն. և զամ զկահն պա
տերազմի. և էառ նա զգանձսն ծած
կեալս. զորս եգիտ. և զամ անօթ
ցանկալի. և գնաց յերկիր իւր։
25 *Եւ եհեղ զարիւն բազում. և գոր֊
ծեաց մահունս անհամարս. խօսեցաւ
զամբարտաւանութի մեծաւ հպար֊
26 տութբ։ *Եւ եղև սուգ մեծ 'ի վր
27 իղի ընդ ամ տեղիս իւրեանց։ *Հե֊
ծեցին իշխանք՝ և ծերք՝ և կուսանք.
և երիտասարդք տկարացան՝ եղծաւ
28 գեղ կանանց։ *Եւ ամ փեսայից լի
էին բերանք ողբոց լալութե. և հար֊
սանց եղեն արգելանք սգոյ՝ սրսկա֊
29 պանք իւրեանց։ *Եւ շարժեցաւ եր
կիր 'ի վերայ բնակչաց իւրոց. և ամ
տունն յակոբայ զգեցաւ զամօթ ա֊
30 նարգանաց։ *Զհետ երկուց ամաց
ժամանակացն այնոցիկ, արձակեաց
արքայն անտիոքոս զիշխան հարկա֊
հան 'ի քաղաքսն հրէաստանի. և եկն
31 յեէմ զօրօք բազմօք։ *Խօսել սկսաւ
բանիւք խաղաղութե նենգութբ. և
32 նոքա հաւատացին նմա։ *Եւ անկաւ
նա 'ի վերայ քաղաքին յանկարծակի.
և եհար զնա հարուածս մեծամեծս.
և սատակեաց ժողովուրդս բազումս
33 յիղէ։ *Եւ էառ նա զաւար քաղա֊
քին. և հրձիգ արար զամ փայտա֊
կերտ զապարանից նորա. քակեաց՝ և
աւերեաց շուրջ զպարիսպս քաղաքին.
և զամ զորմս շինուածոց ապարանից
34 նր։ *Ի գերութի վարեցին զկանայս
և զմանկունս. և զամ զանասունս
նոցա 'ի ժառանգութի իւրեանց։
35 *Եւ շինեցին զամրակողմ զգլուխ քա
ղաքին 'ի պարիսպ ամուր յաշտարակս
հզօրաց. և եղև նց այն իբրև բերդ 'ի
36 բերդի ամրացեալ քաղաքին։ *Եւ
անդր մուծին ազգք մեղաւորք զարս
անօրէնս. ամրացուցին, և լցին զինու.
համդերձեցին և լցին համբարօք. և
37 զամ զաւարն եէմի։ *Ի ներքս կու֊
38 տեցին. և եղեն յորոգայթ մեծ։ *Եւ
'ի խափան սրբութե՝ և 'ի սատան չար֊
39 տանն իղի հանապազորդ։ *Եւ հե֊
ղին զարիւն զարդար շուրջ զսրբու֊
թբն. և պղծեցին զսրբութիւն։
40 *Փախստեայ գնացին այնուհետև
բնակիչքն յեէմէ վասն նոցա. և եղև
նա բնակութի օտարաց. և ինքն օտա
րացաւ 'ի զաւակէ իւրոց ծննդոց. զի
41 որդիքն նր թողին զնա։ *Եւ սրբութի
նորա աւերեցաւ. և եղև յանապատ.

դար֊

Ձօէէլ. 2. 6. Ամոս. 8. 10.

դարձան տօնք տարեկանաց նորա 'ի սուգ. և շաբաթք նր յամօթ նախատանաց. պատիւ նր անգոսնեցաւ: *Եւ փառք նորա լցան անարգանօք. 42 և բարձրութի նորա 'ի սուգ կործանեցաւ: *Ընդ այմ աշխարհս հրովարտակք 43 արձակեցան. զի թողցեն այմ բնակիչք երկրի զօրէնս իւրաքանչիւր. և 'ի մի օրէնս նորա կացցեն: *Յանձն առին ազգք այմ ըստ հրամանին արքունի: 44 *Եւ բազումք ևս 45 յիսրայելացւոց անտի դարձան 'ի պաշտօնն անօրէնութե. և զոհեցին կռոց նոցա. և պղծեցին զշաբաթս իւրեանց: *Հրեշտակ արձակեաց թագաւորն 46 հրովարտակօք հանդերձ յեմ 'ի քաղաքն հրեաստանի՝ դարձուցանել զնա յօրէնս օտարոտիս: *Եւ խափան 47 առնել ողջակիզացն պատարագաց՝ և զոհիցն սրբութե: *Պղծել զշաբաթս՝ 48 և զտօնս տարեկանաց: *Եւ ապականել 49 զսրբութիւն նուիրեալ: *Շինել 50 կանգնել. երևեցուցանել անդս մեհենից. յաղել զխոզս. և խառնակ զանասունս: *Եւ թողուլ զորդիս նոցա 51 անթլփատս. պղծել զանձինս նց այմ պղծութե անօրէնութե. զի մոռասցին ամենևին զօրէնս. և փոխեսցեն զիրաւունս: *Եւ որ ոչ կացցէ 'ի հրա 52 մանի թագաւորին, մահու մեռցի: *Ըստ այմ բանիցն զորս գրեաց թա 53 գաւորն, արար տեսուչս ընդ այմ տեղիս: *Եւ պատուէր ետ քաղա 54 քացն հրեաստանի մատուցանել զոհս քաղաքի քաղաքի: *Եւ ժողովեցան 55 առ նոսա արք այմք. որք ապստամբք լեալ էին յօրինաց անտի. և լցին չարեօք զերկիրն: *Եւ արարին ամրա 56 խիտ վիճել յայմ տեղիս ամրութե ապաստանաց նց: *Յամին հարիւրոր 57 դի քառասներորդի՝ հինգերորդի ամսեանն. որ օր քսան և հինգ էր ամսոյն. շինեաց նա պատկեր պղծութե անապատի 'ի վերայ սեղանոյն: *Ընդ այմ 58 հրեաստան շուրջ զքաղաքօք շինեցին մեհեանս. և 'ի վր այմ դրանց ապարանիցն, և ընդ այմ գնացս քաղաքացն խունկս արկանէին: *Եւ զգիրս այմ 59 կտակարանացն՝ զորս գտանէին, պատառէին և հրով կիզուին: *Եւ ուր 60 առ ումեք գտանէին գիրք կտակարանաց, կամ թէ ոք ուրեք ընդ օրէնս հաւատարէր. հրամանն թագաւորին զնա մահու սպանանէր: *Եւ այդպէս 61 սատակեցեալ էր հրամանն 'ի վերայ իէլացւոց առնել նոցա. զոր գտանէին ամսոյ ամսոյ 'ի մէջ քաղաքացն: *Եւ 62 ըստ քսան և հինգերորդի աւուր ամսոյ զոհս 'ի բագինս բագինս մատուցանէին. 63 որ էր 'ի վր սեղանոյ: *Եւ զկանայսն՝ որոց զմանկունսն իւրեանց թլփատեալ էր. սպանանէին ըստ հրա 64 մանին: *Եւ զմանկունսն զպարանոցէ մարցն կախէին ըստ հրամանին արքունի. և զթլփատիչսն, և զորդիս 65 նց ըստ նմին օրինակի: *Եւ բազումք յիսրայելացւոցն հաստատեցան՝ և պնդեցին զանձինս իւրեանց՝ զի մի կերիցեն 'ի պղծութէ անտի: յանձն առին յօժարութե մեռանիլ. և ոչ պղծել զանձինս իւրեանց 'ի խառնակ կերակրոյ 66 անտի: *Եւ մի ուրբ կտակարանքն պղծեսցին. և մեռան բազումք 'ի նոցա 67 նէ: *Եւ եղև տօն ուրախութե 'ի վերայ իսրայէլի մեծ յոյժ:

հաւատարէր

## ԳԼ: Բ.

1 Յաւուրս ժամանակացն այնոցիկ համբարձաւ մատաթի շմաւոնեան որդի յօհաննու քահանայ՝ յորդւոց յովարիմյ եէմի: եկն՝ և նստաւ նա 2 յամուրս այրիցն 'ի մոդիմ: *Եւ նր էին որդիք հինգ. յօհաննէս՝ որ անուանեալ 3 կոչի կադդիս: *Շմաւոն՝ որ 4 անուանեալ է թարսսի: *Յուդա՝ որ 5 անուանեալ է մակաբէ: *Եղիազար՝ որ անուանեալէ աւարեան: յօնաթան՝ 6 որ կոչեցաւ սափուս: *Եւ իբրև ետես նա զհայհոյութիւնն՝ որք լինէին 'ի 7 հրեաստանի և 'ի մէջ էեմի: *Սկսաւ ողբալ յանձն իւր՝ և ասէ. վա՜յ է ինձ. իսկ ընդէ՞ր բնաւ պատրաստեցաւ ինձ տեսանել զբեկումն ժողովրդեան իմոյ. և կամ տեսանել զբեկումն սրբոյ քաղաքին. զի եկաց՝ մնաց նա մատնեալ 8 'ի ձեռս թշնամեաց իւրոց: *Եւ սրբութին մատնեցաւ 'ի ձեռս օտարացեղաց. տաճարն իբրև այր մի անկեալ 'ի փա 9 ռաց: *Եւ սպաս փառացն նր իբրև մարդ՝ որ մատնեցաւ 'ի գերութի: կոտորեցան տղայք նր 'ի փողոցի իւրում. և երիտասարդք նորա 'ի սուր թշնամ 10 եաց: *Իսկ ո՞ր ազգ է. որ ոչ ժառանգեաց զտէրութի նր. և կամ ո՞վ իցէ որ ոչ էհար աւար զկապուտ նր. և ոչ 11 յաղթեցին աւարի նորա: *Ամենայն զարդ նր զերծաւ 'ի նմանէ. փոխանակ ազատութեն մատնեցաւ 'ի ստրկու 12 թի: *Եւ այմ գեղ զարդուն մերոյ՝ և սրբութին մեր՝ և փառքն մեր յաւար կործանեցան. և զայս այմ պղծեցին հե 13 թանոսք: *Եւ զի՞ պիտոյ են մեզ բնաւ 14 այս կեանք: *Յայնմ ժամանակի մատաթի և որդիք նր ձեռն զօձեօք արկանէին. զպատմուճանս պատառէին. քրձազգածք լինէին. և 'ի սուգ մտանէին:

նէին։ 15 *Եկին՝ և հասին՝ 'ի թագաւորէ անտի՝ որք ստիպաւ տագնապէին զա֊պստամբութիւն. և եկին 'ի քաղաքն 'ի Մոդիմ. զի անդ զոհս մատուսցեն։ 16 *Եւ բազումք յԻսրայելացւոց անտի ընդ նոսա։ եկին՝ ժողովեցան առ նոսա. և Մատաթի՝ և որդիք նր։ 17 *Հապա՝ խօսել սկսան. որք եկեալ էին 'ի թագաւորէ անտի. և ասեն ցՄատաթի. իշխան փառաւոր ես դու. և մեծ ես դու 'ի քաղաքիս յայսմիկ. որդւովք և եղբարբք հաստատեալ ես դու 'ի մէջ սոցա։ 18 *Արդ՝ մատի՛ր նախ դու՝ և արա զհրամանս թագաւորին կամօք. որպէս և արարին ազգքն ամ արք հրէաստանեայք. և ամ որք բնակեալ են յԵէմ. և եղիջիք դուք բարեկամք արքայի. և դու՝ և որդիքդ պատուեսջիք ոսկւով և արծաթով. և հրովարտակօք արքունի։ 19 *Պատասխանի ետ Մատաթի 'ի ձայն մեծ՝ և ասէ. եթէ ամ ազինք 'ի տան թագաւորին՝ ունկնդիրք են հրամանաց թագաւորին, ապստամբեալ՝ և ելեալ են յիւրաքանչիւր հարցն օրինաց, և ընտրեցին նոքա զպատուէր թագաւորին։ 20 *Սակայն ես՝ և որդիք՝ և եղբարք իմ ըստ պատուիրանաց հարցն մերոց գնասցուք։ 21 *Քաւ լիցի մեզ թողուլ զօրէնս և զիրաւունս։ 22 *Եւ ո՛չ 'ի հրամանս դառնալ թագաւորի. ո՛չ թողումք զպաշտօն հարցն. ո՛չ թիւրիմք յաջ կամ յահեակ. ո՛չ անսամք հրամանի թագաւորին։ 23 *Այն ինչ նորա բանքն 'ի բերան էին. այր մի 'ի հրէից անտի յանդիման ամենեցուն յառաջ եկաց զոհս մատուցանել առաջի մեհենին 'ի բագնի անդ 'ի Մոդիմ. ըստ հրամանի թագաւորին։ 24 *Իբրև ետես Մատաթի. 'ի նախանձ բարկութե բրդեցաւ. երիկամունք իւր զդողային հարան. և լի եղև սրտմտութբ ըստ օրինաց դատաստանին. զոտս արձակեաց և եհար զհրէայն. և անդէն սատակեաց առաջի բագնին։ 25 *Եւ զայրն, որ արքունի հրամանաւն տագնապէր զզոհսն մատուցանել՝ անդէն սպանանէր. և զբագինն կործանէր. և զմեհեանն աւերէր։ 26 *Նախանձէր զնախանձ օրինացն. ‖ որպէս արար փենէէս ընդ զամբրի ընդ որդին եղովմայ։

‖ Թուոց 25. 7. որդին սաղովմայ

27 *Ի ձայն բարձր աղաղակել սկսաւ՝ և ասել. հապա՝ ամ մարդ որ դիցէ 'ի մտի իւրում խնդրել զնախանձ վրիժուց օրինացն. որ ընդ հաստատութե կամիցի օրինացն, զհետ իմ ելցէ։ 28 *Խաղացին, փախստեայ գնացին նա և եղբարք իւր ընդ լերինս. և թողին զամ զինչս իւրեանց անդէն 'ի քաղաքի։ 29 *Յայնմ ժամանակի իջին բազումք՝ որք խնդրէին զիրաւունս և զարդարութիւնն՝ յանապատ անդր։ 30 *Նստիլ անդ կամէին՝ որդւովք՝ և անասնովք համդերձ. զի խստացան չարիքն 'ի վերայ նոցա։ 31 *Ազդ եղև իշխանաց թագաւորին և զօրացն. որք էին 'ի քաղաքի դաւթի. եթէ իջին արք ոմանք յամուրս անապատի. որք իշխեցին ցրել զհրամանս թագաւորին. և բազումք միաբանեալ իջին ը նոսա։ 32 *Զամ ետուն. կազմեցան. պատրաստեցան. հեծան. հասին. և պատեցին զամուրս անապատին. եկին 'ի մարտ պատերազմի՝ և փակեցին զնս յաւուրս շաբաթուց։ 33 *Նախ բանս գնացք եղեն. սկսան խօսիլ ը նոսա՝ և ասել։ գոնէ՝ արդ յայսմհետէ կացէք 'ի հրաման թագաւորին. և կեցջիք։ 34 *Ընդդէմ խօսել սկսան՝ և ասեն. ո՛չ ընդ ամուրս ելանեմք. և ո՛չ ըստ այդմ բանի հրամանի թագաւորին պղծեմք զշաբաթս մեր. և ո՛չ անօրինիմք յօրէնս մեր։ 35 *Իբրև զայն բանս լուան. սաստկացուցին զպատերազմն առաւել 'ի վերայ նց. և դնտեցին զամուրսն յառնուլ զնս։ 36 *Նոքա ոչ զկիրճն առին. ո՛չ գլուխ արձակեցին. ոչ զամուրսն փակեցին. և ոչ բնաւ բանիցն ետուն պատասխանի 37 (վն աւուրն շաբաթու։) *Այլ միայն լոկ զմիմեանս քաջալերէին։ ասէին, աստէն մեռցուք 'ի սրտմտութե մերում. զի աւադիկ վկայեն մեզ երկինք և երկիր. զի 'ի զուր տարապարտուց կորուսանէք զմեզ։ (այլ մեզ լաւ լիցի մեռանիլ. քան թէ ընդ օրէնս անցանիցեմք. և զշաբաթս պղծիցեմք։ ) 38 *Իբրև զայն լուան. սաստկացուցին զպատերազմն յաւուրն շաբաթու. և սպանին 'ի նոցանէ հազար ոգի. թող զմարդ և զանասուն, զորս 'ի գերութի 39 վարեցին։ *Իբրև զայն լուան Մատաթի և եղբարքն իւր. սուգ մեծ առին. 40 և տրտմեցան յոյժ։ *Սկսան խօսիլ այր ընդ ընկերի՝ և ասեն. եթէ ամենեքեան զայն օրինակ ունիմք, զոր արարին եղբարքն մեր. և ոչ ելցուք տալ մարտ պատերազմի ընդ հեթանոսս 'ի վերայ անձանց՝ և 'ի վն իրաւանց մերոց. քան սակաւ ինչ ժամանակ անցեալ իցէ, զմեզ արագագոյն ես սատակեսցեն քան զառաջինսն։ 41 *Հապա ժողովեցան. ուխտ եդին. խորհուրդ խորհեցան ընդ միմեանս՝ և ասեն. ամ մարդ. որ եկեսցէ 'ի վր մեր 'ի մարտ պատերազմի յաւուրս շաբաթու. համարձակ մարտիցուք. և մի առ հասա

րակ

բակ ամենեքին սատակեսցուք. որպէս և եղբարքն մեր. որք ապրեալքն յանապատի անդ ։ 42 *Յայնմ ժամանակի ժողով լինէր առ նոսա բազում զօրաց ասիդացւոց. ազգ հզօր և պատերազմօղ յորդւոցն իղի. այր ամ ինքնակամ նահատակեալ 'ի վր օրինացն. 43 *Եւ ամ փախստեայքյիւրաքանչիւր չարեաց՝ գային՝ յաւելուին 'ի նոսա. և լինէր նոցա հաստատութիւն զօրութեան ։ 44 *Զօր կազմեցին. և զգունդ բոլանդակեցին. պատրաստեցան՝ հարկին զմեղաւորս 'ի զօրութիւն բարկութեան իւրեանց. և զզօրս անօրէնս 'ի սրտմտութիւն բարկութեան իւրեանց. և որ զմնացեալսն փախստեայս 'ի հեթանոսս արկանէին ։ 45 *Շրջեր խաղայր Մատաթի եղբարբքն և բարեկամօքն հանդերձ. հատանէր՝ հարկանէր՝ աւերէր զմեհեանսն՝ և կործանէր զբագինսն ։ 46 *Թլփատէր զմանկունսն անթլփատս. և զօրանայր 'ի վր սահմանացն իէլացւոց ։ 47 *Հալածականս առնէր զորդիսն հպարտութեան. և յաջողեցաւ գործն 'ի ձեռս նց ։ 48 *Այցելու լինիլ օրինացն. վրէժխնդիր լինիլ 'ի ձեռացն հեթանոսաց՝ եղծանել զանօրէն հրաման թագաւորին. և ոչ ետուն բարձրանալ եղջերին ամբարտաւանութեան ։ 49 *Իբրև մերձեցան աւուրքն Մատաթեայ մեռանելոյ. կոչեաց զորդիսն առաջի իւր. և ասէ ցնս. այժմիկ հաստատեցաւ հպարտութիւն և ամբարտաւանութիւն. և աչս հասեալ է ժամանակ կշտամբութեան կործանման՝ հպարտութեան և ամբարտաւանութեան ։ 50 *Այժմ արդ որդեակք իմ, եկա՛յք նախանձեցարո՛ւք զնախանձ օրինացն. փոխանակեցէ՛ք դուք զանձինս ձեր փոխանակ հարցն կտակարանաց ։ 51 *Յիշեցէ՛ք զգործս հարցն ձերոց. զորինչ քաջութիւնս արարին 'ի դարս իւրաքանչիւր. առցարո՛ւք զփառս աւագութեան. և ժառանգեցէ՛ք զանուն յաւիտենից ։ 52 *Աբրահամ ոչ ապաքէն 'ի փորձութեան հանդիպի գտաւ հաւատարիմ. և համարեցաւ նմա յարդարութիւն ։ 53 *Յովսէփ 'ի ժամանակի նեղութեան իւրոյ պահեաց զպատուիրանն՝ և եղև տէր 'ի վերայ երկրին եգիպտացւոց ։ 54 *Փենէէս հայր մեր նախանձայոյզ՝ նախանձեցաւ զնախանձն արդարութեան. և էառ կտակ յաւիտենից զքահանայութիւնն ։ 55 *Յեսու որդի նաւեայ առ հաստատել և կատարել զպատգամս ՏՆ եղև դատաւոր որդւոցն իէլի ։ 56 *Քաղէբ վասն վկայելոյն 'ի մէջ ժողովրդեանն, տէր եղև ժառանգութեան ։ 57 *Դաւիթ վն հեզութեան արդարութեան և ողորմութեան ժառանգեաց զաթոռ թագաւորութեան յաւիտենից ։ 58 *Եղիա վասն նախանձայոյզ լինելոյ՝ խնդրելոյ զվրէժն օրինաց՝ վերացաւ յերկինս ։ 59 *Անանիա՝ Ազարիա՝ Միսայէլ՝ հաւատովքն իւրեանց ապրեցան 'ի հրոյն հնոցէ ։ 60 *Դանիէլ 'ի խորհուրդս իմաստութեան իւրոյ՝ փրկեցաւ յառիւծուցն բերանոյ ։ 61 *Արդ՝ այդպէս ածէք զմտաւ. եթէ ամենեքեան որք յուսացեալք են 'ի նա ըն ազգս ազգս իւրեանց՝ ոչ տկարասցին ։ 62 *Եւ 'ի բանից առն ամպարշտի մի՛ զանգիտիցէք՝ զի փառք նորա աղբեղէնք են ։ 63 *Այսօր է՝ և 'ի վաղիւ այլ ոչ գտանի՝ զի դառնայ 'ի հող իւր. և կորնչին ամ խորհուրդք նորա ։ 64 *Զօրացարո՛ւք որդիք, քա՛ջ լերուք 'ի վերայ օրինացն. զի 'ի նմին փառաւորեսջիք ։ 65 *Եւ ահա դիկ շմաւոն եղբայր ձեր, գիտեմ զի այր խորհրդական է. դմա լուիջի՛ք. դա ձեզ լիցի 'ի տեղւոջ հօր ։ 66 *Եւ յուդա մակաբէ. դա լիցի ձեզ սպարապետ՝ զօրավար զօրացդ. և տացէ զպատերազմ ժղ զօրս ։ 67 *Այլ և դուք յարեսջի՛ք 'ի ձեզ զամ զօրինակիրս օրինաց. նախանձայոյզ լիջի՛ք խնդրել զվրէժ ժողովրդեանն ձերոյ ։ 68 *Հատուցէ՛ք զհատուցումն 'ի հեթանոսս՝ և հայեցարո՛ւք 'ի հրամանս օրինաց ։ 69 *Օրհնեաց զնոսա՝ և ինքն կատարեցաւ. և փոխեցաւ առ հարս իւր ։ 70 *Եւ մեռաւ նա յամին հարիւրորդի քառասներորդի յութերորդի. և եդին զնա 'ի շիրիմս հարցն իւրոց 'ի մոդիիմ. և կոծեցան զնա ամենայն իսրայէլ կոծ մեծ ։

[Margin: Յեսուայ 14.13. — 2 Թագ. 2.4. — 4 Թագ. 2.11. — Դան. 3.50. — Դան. 6.22. — Ծննդ. 22.1. — Ծննդ. 41.40. — Թուոց 25.13. — Սիրաք 45.28. — Յեսուայ 1.2. — Թուոց 14.6.]

## ԳԼ. Գ.

1 ամբարձաւ յուդա որ անուանեալ կոչիւր մակաբէ՝ որդի նր ընդ նր ։ 2 *Եւ ձեռնտու և օգնական եղեն նմա ամ եղբարք նորա. և ամենեքեան որք երթեալ էին զհետ հօր նր, տային պատերազմ 'ի վերայ իէլացւոց խնդութբ և ուրախութբ ։ 3 *Եւ մեծ լինէին փառքն 'ի վերայ ժողովրդեանն. զգեցաւ զզէն իբրև զհսկայ. և հանդերձեցաւ 'ի զարդ պատերազմի. մղէր զմեծամեծս 'ի պատերազմի. և հովանի լինէր ամ գնդին իւրում նիզակաւն ։ 4 *Նմանեցաւ առիւծու գործովք իւրովք. և իբրև զկորիւն առիւծուց՝ որ մռնչէ ։ 5 *Հալածեաց զանօրէնս 'ի քնիլ իւրում. և հրձիգ արար զխռովիչսն ժողովրդեան իւրոյ ։ 6 *Մարսեցան անօրէնք յահէ նր. և

և ամ սատարք անօրէնութե խռովե
ցան. և յաջողեցաւ փրկութի 'ի ձեռս
նր : * 7 Եւ դառնացոյց զթագաւորս բա
զումս . և ուրախ արար զյակոբ 'ի
գործս իւր . և մինչև յաւիտեանս յիշա
տակ նր օրհնութե : * 8 Եւ հասանէր
նա 'ի մէջ քաղաքացն հրէաստանի. և ջըն
ջէր զամպարիշտս 'ի նոցանէ՝ դարձու
ցանել զբարկութի յիլէ : * 9 Անուանէր
զցրուեալս . և գտանէր զկորուսեալս :
* 10 Ապա զօրաժողով լինէր ապողո
նիոս հեթանոսօք հանդերձ. և բա
զումս զօրս 'ի շամրտացւոց ժողո
վէր. գալ՝ տալ ընդ իլի պատերազմ :
* 11 Եւ իբրև ետես յուդա. ել ընդառաջ
նոցա . եհար՝ և սպան զնա . և արկա
նէր բազում վիրաւորս 'ի զօրաց նր .
և զմնացեալսն 'ի փախուստ դարձու
ցանէր : * 12 Առնոյր զկապուտ զաւար
նր . և զսուսերն ապողոնեայ առնոյր
յուդա . և այնու խաղ հարկանէր զզօրս
նր զամենայն աւուրս կենաց իւրոց :
* 13 Իբրև զայն լսէր սերոն իշխան զօրացն
ասորեստանեայց . եթէ զօրաժողով է
յուդայ . և բազում հաւատացեալք
ընդ նմա՝ որք դայլին 'ի պատերազմ :
* 14 Խորհեցաւ յանձն իւր, և ասէ . արա
րից և ես անուն՝ և փառաւորեցայց
յարքայութե իմում. և տաց պատե
րազմ ընդ յուդայի . և պարտեցից
զայնոսիկ . որք անարգեն զհրաման
թագաւորի : * 15 Պատրաստեալ կրկնէր՝ լի
նէր զօրաժողով . և բազում զօրք ընդ
նմա անօրինացն 'ի թիկունս հասա
նէին . գալ՝ հասանել և խնդրել ըզ
վրէժ յորդւոցն իլի : * 16 Եւ եկն եհաս
մինչ 'ի կողմանս բեթօրայ. ել յուդա
ընդառաջ նմա սակաւուք : * 17 Իբրև
տեսին զգունդն՝ զի գայր ճակատեալ
ընդդէմ նց. սկսան խօսիլ՝ որք ընդ յու
դայի էին՝ և ասեն. զի արդ կարասցուք
մեք սակաւաձեռն մարտնչիլ ընդ այն
չափ պնտակազմ գնդի. մանաւանդ զի
լքեալք և լուծեալք . զի այսօր քանի
է , զի նօթի եմք : * 18 Քաջալերել սկ
սաւ զնոյն յուդա՝ և ասէ . դործ մի դիւր
ին է Տն մատնել զբազումս 'ի ձեռս
սակաւուց . և ոչինչ է խտիր առաջի
երկնաւորին ընդ բազումս կամ ընդ
սակաւս : * 19 Զի ոչ եթէ բազում զօ
րօք յաղթութի կանգնի . այլ յերկնից
է զօրութի յաղթութե : * 20 Նոքա գան
'ի վերայ մեր 'ի հպարտութի ամբար
տաւանութե . անօրէնութե զմեզ ջն
ջել . զկանայս և զորդիս մեր վարել 'ի
գերութի : * 21 Այլ մեք մարտնչիմք վասն
անձանց մերոց՝ և վն օրինաց մերոց :
* 22 Եւ Տր սատակեսցէ զնոսա առաջի

ատից մերոց . և դուք զօրացարուք .
քաջ լերուք՝ և մի զանգիտէք : * 23 Եւ յոր
ինչ բանքն 'ի բերան էին . յարձակէր
'ի վր գնդին . զայն թէ բեկանէր՝ յո
րում վառեալ կայր սերոն արքայ : և
ջարդէր զգունդն 'ի տեղւոջէ . և զզօրսն
ամ առաջի նորա նոյլաւ հանդերձ 'ի
փախուստ դարձուցանէր : * 24 Եւ ին
քեանք զհետ լինէին նոցա մինչև 'ի
կողմանս բեթօրայ դաշտին . և բա
զում վիրաւորս 'ի նոցանէ դիաթաւ
ալ յերկիր կացուցանէին . և անկա
նէին 'ի նոցանէ իբրև արք ութնհար
իւր . և որք մնացեալքն էին՝ փախս
տեայք անկանէին 'ի փիլիստիիմ :
* 25 Եւ սկսաւ ահն և հոյն երթալ առա
ջի յուդայ և եղբարցն . յօժարէին այ
նուհետև ասպատակ տալ 'ի հեթա
նոսսն . որք շուրջ էին զնոքօք : * 26 Եւ եկն
եհաս մինչև 'ի թագաւորն անուն նր .
և վասն պատերազմացն պատմէին հե
թանոսքն : * 27 Իբրև լուաւ անտիոքոս
կայսր զբանս զայս . բարկացաւ 'ի սրտ
մտութի բարկութե իւրոյ . զօրաժո
ղով լինէր՝ յամ աշխարհաց իւրոց
զօրս կուտէր բազում յոյժ : * 28 Գանձ
բանայր . պարգևս բաշխէր զօրաց տա
րւոյ միոջ . և պատուէր տայր կալ նց
պատրաստ յիրս ամ : * 29 Իբրև ետես
եթէ գանձքն սպառեցան . և հարկ
աշխարհին նուաղեցաւ վն երկպառա
կութե և հարուածոյն . զոր էած նա
'ի վերայ երկրի՝ յեղծանել օրինացն
նախնեաց . որ էր իսկզբանէ աւուրց
ժամանակաց : * 30 Զարհուրեցաւ՝ թէ
դուցէ ոչ բաւեսցուսցէ զպարգևսն և
զռոճիկս . ոմ յառաջ առատաձեռն
բաշխէր : * 31 Տարանէր յանձն իւր
յոյժ . խորհեցաւ մտանել յաշխարհն
պարսից . և առնուլ հարկս յաշխար
հաց անտի՝ և կուտել արծաթ յոյժ :
* 32 Եւ եթող նա անդ զլիսիաս այր
փառաւոր յազգէ թագաւորութե 'ի
վր իրացն արքունի 'ի կողմանցն եփ
րատու . և 'ի սահմանի եգիպտացւոց :
* 33 Սնուցանել զորդի իւր անտիոքոս .
մինչև դարձցի նա անդրէն : * 34 Եւ ե
թող առ նմա զկէս զօրացն . և զփիղսն .
և պատուէր ետ նմա վն ամի . որ ինչ
կամէր . և որ զինչ խորհեցաւ . և վն
բնակչացն հրէաստանի և եէմի :
* 35 Եւ դումարտակ արար 'ի վերայ նց
սատակել զնոսա . և ջնջել զզօրութին
իլի՝ և զմնացորդսն եէմի . և ջնջել 'ի
տեղւոջէ անտի զյիշատակ նց : * 36 Եւ
բնակեցուցանել անդ զորդիս օտա
րաց ընդ ամ սահմանս նց . լարաբա
ժինս առնել զամ երկիր նց : * 37 Եւ ինքն
էառ

զեղգքաղաքն: * Եւ ասէ ցայնոսիկ. 11
որք գործէին զգործ շինուածոյ պարս
պացն. շինեցէք ասէ զպարիսպդ. և
զլեառն սիոն շուրջ 'ի չորս կողմս յոր
ձաքար վիմաց: և արարին այնպէս:
* Եւ փախստեայ գնային այլազգիքն. 12
որք էին յամուրս անդ. որոց շինեաց
յայնժամ բաքիդ: * Եւ եթող զնոսա 13
յիւրաքանչիւր տեղւոջ. և գնաց նա
յերկիրն. ուստի էր: * Եւ 'ի բեթսուր 14
մնացեալք էին ոմանք. որոց թողեալ
էր զօրէնսն և զհրամանսն. զի նա էր
ամուր: * Իբրև լուաւ աղէքսանդրոս 15
արքայ զաւետիսն՝ զոր ետ բերել դե
մետրիոս առ յովնաթան. և պատմեցին
նմա զպատերազմ քաջութեն, որ արա
րեալէր եղբարքն իւրովք. և զվիշտն՝
որ անցեալէր ընդ նս: * Եւ ասէ. մի 16
թէ կարեմք ուրեք գտանել այր մի
այնպիսի. զի առնիցեմք զնա մեզ բա
րեկամ և թիկունս: * Եւ հրամայեաց 17
առ նոսա հրովարտակս ըստ բանիցս
այսոցիկ: * Արքայ աղէքսանդրոս՝ առ 18
եղբայր յովնաթան ողջոյն: * Ազդ եղև 19
մեզ վն քո. եթէ այր քաջ զօրութե
ես. և արժանի ես դու մեզ լինել բա
րեկամ: * Արդ կացուցաք մեք զքեզ 20
այսօր գլուխ քահանայապետութեան
ազգի քոյ. և բարեկամ արքայի կոչել
զքեզ. և ետ տանիլ նմա պսակ ոսկի
և ծիրանիս: արդ՝ կալ լիցի քեզ յուխ
տի մերում. և պահել զհաւատ բարե
կամութե առ մեզ. ողջ լեր: * Եւ 21
էառ՝ և զգեցաւ յովնաթան զայն ըն
տիր պատմուճան. յամին հարիւրոր
դի վաթսներորդի եօթներորդի 'ի տօնին
տարեկանաց տաղաւարահարաց. ժո
ղովեցին զօրս. և կազմեցին զէնս. և
ուրախ լինէին: * Եւ լուաւ դիմետր 22
զբանս զայս. և տրտմեցաւ յոյժ: * Եւ 23
ասէ. զինչ գործ գործեցաք. զի ոչ
մեք մեզ արարաք զնոսա թիկունս. և
արդ աճապարեաց աղէքսանդրոս. և
խօսեցաւ ընդ նոսա 'ի հաշտութի. և
արար իւր ձեռն հաստատութե զհրէ
աստան: * Արդ՝ առէք՝ և մեք գրես 24
ցուք առ նոսա զբանս մխիթարութե
մեծարանաց՝ և պարգևաց. զի եղիցին
նոքա մեզ յօգնականութի: * Եւ ետ 25
տանիլ նոցա հրովարտակս յն բանիցս
այսոցիկ. արքայ դեմետրիոս առ ազգն
հրէից ողջոյն: * Զանզի պահեցիք 26
դուք զուխտս և զդաշինս. զօրս ը մեզ
եդիք. կացիք՝ մնացիք դուք 'ի մերում
բարեկամութե. և ոչ ձեռնտու եղէք
'ի թշնամիս. լուաք մեք. և ուրախ ե
ղեաք: * Եւ արդ՝ կացէք՝ պահեցէք՝ 27
մնացէք դուք առ մեզ զնոյն հաւատ:

28 * Եւ մեք հատուսցուք ձեզ թողութիս
բազումս. և տացուք ձեզ պարգևս
29 բազումս: * Եւ արձակեսցուք զձեզ՝
և թողցուք զամ հրէայ 'ի հարկաց. և
զգաժ աղիցն և պսակաց. և փոխա
30 նակ երրորդաց սերմանն: * Եւ զհասա
րակութեց այգւոյն և զծառոյն. որ գայր
ինչ. թողում ձեզ յայսմ օրէ և յապայ.
և յերկիցն օրինացն. որք յաւելան 'ի
ձեզ. և 'ի շամրտացիս և 'ի գալիլեա
ցիս. յայսմհետէ և 'ի յաւիտեանս ժա
31 մանակաց: * Եւ եէմ նուիրեալ՝ սր
թողեալ կացցէ շուրջ զտահմանօք
իւրովք հանդերձ. և 'ի տասանորդէ
32 զմաքս ձեզ թողեալ լիցի: * Եւ զիշ
խանութի ամրիդ 'ի ներքս տուեալ
լիցի քահանայապետդ. և կացուսցէ
դա 'ի նմա արս. զորս ինքն ընտրեսցէ
33 պահել զդա: * Եւ զամ անձն հրէի.
որ 'ի գերութե գտցի յերկրէն հրէաս
տանի՝ յամի թագաւորութե իմում,
արձակեալ ձրի առանց փրկանաց.
զամ հարկս հասի՝ և մաքսի՝ և գրաս
34 տու: * Եւ յամ տօնս տարեկանաց.
շաբաթք, և գլուխք ամսոց. և աւուրք
յառաջքան զտօնն. և երեքերեք աւ
ուրք զկնի տօնին եղիցին. ազահարկ
թողեալ ամ հրէից. որք իցեն 'ի թա
35 գաւորութե իմում: * Եւ մի իշխեսցէ
պահանջել նեղել զոք վասն ամ իրաց
36 իմոց: * Եւ առաջինք գտցին նոքա 'ի
զօրս արքունի քսան և վեց հազար զօ
րական. և պարգևք ելցեն նոցա. ոպ
օրէն է ընդ առաջին զօրս արքունի՝ ը
37 մեծամեծս: * Եւ 'ի նոցանէ դար
ձեալ հաստատեսցի 'ի ձեռանէ արքու
նի. որք են հաւատարիմք. և իշխանք՝
և վերակացուք՝ եղիցին նոցունց. և
գնասցեն նոքա ըստ օրէնս իւրեանց.
ոպ հրաման ետ արքայ երկրին հրէաս
38 տանի: * Եւ զերիս օրէնս՝ որ յառա
ջագոյն եդեալ էր հրէաստանեայց,
յերկրէն շամրտացւոց անդրէն դար
ձուցանել 'ի հրէաստան. և համարիլ
ը երկոսին մի օրէնս. զի մի այլ իշխան
ձեռնահաս լիցի 'ի վերայ նց. այլ քա
39 հանայապետն: * Եւ քաղաքն պտղո
մեայեւոց տուեալ լիցի նց 'ի պարգևս
'ի նուէրս սրբոցն. որք յերուսաղէմ
են 'ի պէտս ծախիցն. որք 'ի սրբս անդր
40 ծախիցին: * Եւ ես տաց ամ յամէ հն
գետասան հազար կշիռ արծաթոյ՝
յարքունի համարէ. 'ի կողմանց, ուս
41 տի արժան իցէ: * Ամ մթեր. զոր
նոքա ոչն կարէին ընուլ, յարքունուստ
լիցի. որպէս ընդ առաջին ազգմն:
42 * Յայսմհետէ տացեն յարքունի տա
րաղէ. և 'ի վ ը այսօրիկ զհինգ հազար
կշիռ

կշիռ արծաթոյն. զոր առնուին 'ի մուտիցն սրբութե ե̃ համարոյ տարւոյն. և այդ թողեալ լիցի. զի անկ է այդ քահանայից և պաշտօնէից: * Որ 43 միանգամ դիմեսցէ ոք փախստեայ անկանել 'ի տաճար անդր յԵ̃մ, կամ որ միանգամ 'ի սահմանաց դորա իցէ. որ պարտիցի ոք ինչ յարքունիս՝ թողեալ լիցի նմա. և ինքեանք արձակեալք լիցին: * Եւ ա̃մ ինչ՝ որ արատեալ կործանեալ իցէ շինուածոց սրբոցդ. շինեսցին՝ նորոգեսցին. և ծախս համարոյն յարքունուստ վճարեսցի. * Եւ 45 շինեսցեն զպարիսպն Ե̃մի. ամրացուսցեն շուրջանակի. և ծախս համարոյն յարքունուստ վճարեսցի. և ա̃մ պարիսպք ամրոցաց Հրէաստանի շինեսցին: * Եւ իբրև լուաւ յովնաթան 46 և ժողովուրդն զբանս զայս. ոչինչ հաւատացին՝ և ոչ յանձն առին՝ զի յիշեցին զչարիսն մեծամեծս. որ արարեալ էր ընդ Ե̃մի. և նեղութիւնս յոյժ. զոր նեղեցին նոքա զնս̃: * Եւ հաճե 47 ցան՝ հաւանեցան ընդ հաստատութի աղեքսանդրեայ. զի նա եղև նմ̃ նախ առաջնորդ բանիցն 'ի խաղաղութի. և էին նոքա նմա նիզակակիցք և թիկունք զա̃մ աւուրս կենաց իւրեանց: * Զօրաժողով լինէր արքայ աղեք 48 սանդրոս. և կուտէր զօրս բազումս գալ տալ պատերազմ ընդ դեմետրեայ: * Եւ եկին՝ բախեցան թագաւորքն 49 երկոքին ընդ միմեանս. 'ի փախուստ դառնայր գունդն դեմետրեայ՝ յաղթական լինէր նոցա աղեքսանդրոս: * Եւ սաստկացուցանէր զճակատա 50 մարտն 'ի վերայ նոցա մինչև արևուն մտանելոյ անդ. յայնմ աւուր անկանէր դեմետր առաջի աղեքսանդրի. հարկանէին. վանէին. և առ օրին ըզ գործն վճարէին: * Հրեշտակս արձա 51 կէր աղեքսանդրոս յերկիրն եգիպտացւոց՝ (զի դարձաւ տէրութի իմ յիս) առ պտղոմէոս արքայ պատգամ տայր բանից. ըստ օրինակիս ըստ այսմիկ: այս ինչ յայտնի լիցի քեզ արքայդ եգիպտացւոց: * Զի դարձաւ տէրու 52 թի իմ՝ յիս. և նստայ ես յաթոռ հարց իմոց. 'ի ձեռն առի զիշխանութիւն իմ. հարի՝ վանեցի զդեմետրիոս զօրօք իւրովք. և նուաճեցի անդրէն զաշխարհն իմ: * Ի մարտ պատերազմի 53 հարի՝ վանեցի զնա՝ և զզօրս իւր. և նստայ յաթոռ թագաւորութե:
* Արդ՝ եկ հաստատեսցուք 'ի միջի մե 54 րում զհաստատուն խաղաղութի. տուր ինձ դու զդուստր քո կնութե. զի արժանի լիցի ինձ. և ես քեզ արժանի եղէց

55 փեսայութե: * Եւ պատասխանի արքայն եգիպտացւոց. և ասէ. օրհ յաւուրս բարութե՝ յորում դարձար դու յերկիր նախնեաց քոց. և նստար դու յաթոռ արքայութե հարց քոց:
56 * Եւ ես պատրաստեալ եմ 'ի կամս քաղցրութե՝ առնել զայս ամենայն. որպէս գրեցեր դու առ իս. բայց եկ՝ յանդիման լիցուք մեք միմեանց 'ի քաղաքն պտղոմայեցւոց. զի տեսցուք զմիմեանս. և փեսայեսցիցիս ինձ զքեզ՝ ո̃պ
57 ասացեր: * Եւ ել պտղոմէոս արքայ յերկրէն եգիպտացւոց ինքն կղէոպատրաւ դստերբն հանդերձ 'ի քաղաքն պտղոմայեցւոց. յամին հարիւրոր
58 դի վաթսներորդի երկրորդի: * Եւ յանդիման եղեն թագաւորքն երկոքեան միմեանց. և ետ զկղէոպատրայ զդուստր իւր. և արարին հարսանիս մեծաւ պատրաստութե՝ և մեծաւ փառօք ըստ օրինաց թագաւորաց 'ի քաղաքին
59 պտղոմայեցւոց: * Եւ հրովարտակս աղեքսանդրոս առ յովնաթան. զի եկես
60 ցէ նա առ նա: * Չոգաւ՝ գնաց յովնաթան մեծաւ փառօք 'ի քաղաքն պտղոմայեցւոց. և եկն՝ յանդիման եղև թագաւորացն երկոցունց մեծամ̃ պատարագօք. և եգիտ շնորհս 'ի նոցանէ:
61 * Եւ կուտեցան 'ի վերայ նորա արք անօրէնք յԵ̃մէ. ամբաստան լինիլ զնմանէ. և ոչինչ անսայր թագաւորն
62 նոցա: * Հրաման ետ արքայ մերկացուցանել զյովնաթան 'ի հանդերձից իւրոց. և զգեցուցին նմա ծիրանիս.
63 և ընդ իւր նստոյց զնա: * Եւ ասէ ցիշխանսն. արդ՝ ելթիջիք դուք ընդ նմա. և ընդ ամենայն քաղաքս քարոզ տաջիք կարդալ. զի մի ոք իշխեսցէ ամբաստան լինիլ վասն դորա. և մի ոք նեղեսցէ զդա մինչև բանիւ միով:
64 * Եւ եղև՝ իբրև տեսանէին զփառս նր̃. և լսէին զձայն բարբառոյ քարոզին. և տեսանէին, զի զգեցեալ էր ծիրանիս. փախչէին՝ թաքչէին կորն
65 չէին ա̃մ չարախօսքն: * Եւ փառաւորեաց զնա թագաւորն ընդ առաջին բարեկամսն. և արար զնա սպա
66 րապետ և կուսակալ: * Եւ գնայ յոնաթան յերուսաղէմ լի ուրախութբ̃
67 և խաղաղութբ̃: * Դարձեալ յամին հարիւրորդի վաթսներորդի հինգերորդի. եկն դեմետրիոս որդի դեմետրեայ 'ի կողմանց կրետացւոց՝ յեր
68 կիրն հարց իւրոց: * Տրտմեցաւ յոյժ աղեքսանդրոս. դարձաւ անդրէն 'ի
69 քաղաքն անտիոքայեցւոց: * Եւ կացոյց անդ դեմետրիոս զապողոնիոս. որ էր 'ի վերայ ստորին ասորւոց. և

ժո_

ժողովեաց նա զօրս բազումս. և եկն
բանակեցաւ նա զյամնիաւ՝ և առա
քեաց նա առ յօնաթան քահանայա_
պետ. և ասէ. *Դու միայն վերացեալ 70
հպարտացեալ կաս 'ի վերայ մեր. և
ես եղէ ծաղր նախատանաց վն քո.
ընդէր դու զինխս 'ի վերայ մեր լե_
րամբքդ. *Արդ՝ ամէ. դու յուսացեալ 71
ես'ի զօրսդ քո. եկ՝ էջ դու 'ի դաշտ
այսր առ մեզ. զի յանդիման լիցուք
միմեանց. զի գոն և աստ ընդ իս զօրք
քաղաքաց. *Արդ հարց.փորձեա դու. 72
և տես՝ ո՞ իցեմ ես . կամ ո՞յք այնք
իցեն. որք օգնականք իցեն ձեզ. և
ասեն. ոչ գոյ ձեզ ոտից կալ առաջի
մեր. զի երկիցս անգամ 'ի պարտութի
մատնեցան հարքն ձեր յերկրին իւրեանց:
*Եւ արդ ոչ կարէք դուք զդէմ ու_ 73
նել այդչափ այր ու ձիոյ 'ի դաշտի. ուր
ոչ գուցէ թուփ թաքստի. և ոչ տեղի
փախստեան. և ոչ վէմ ապաւինի. և
ոչ խիճ ձեռն'ի քար ձգելոյ: *Իբրև 74
լուաւ յօնաթան զպատգամսն զայն
զապողոնեայ. բարկացաւ 'ի միտս իւր.
յոտն եկաց վաղվաղակի. ընտրեր զըն
տիր ընտիր զօրացն իբրև արս տասն
հազար. և գայր 'ի դուրս յեմէ. ընդ
առաջ եղև նմա շմաւօն եղբայր նր.
ձեռնտու լինել նմա յօգնականութի:
*Եւ եկին հասին 'ի քաղաքն յոպպէա 75
ցւոց. քաղաքացիքն զդուրս ընդդէմ
դնէին. զի պահապանք ստիկանու_
թե կային ապողոնեայ 'ի վերայ նր,
հարին՝ զմարտ պատերազմի եդին'ի
վր քաղաքին: *Զորս առ երկիւղի 76
բացին զդրունսն. առեա մտին՝ և տի
րեցին 'ի վերայ քաղաքին. *Եւ իբրև 77
զայն լուաւ ապողոնիոս. կազմեցաւ.
պատրաստեցաւ. և էառ ընդ իւր երիս
հազարս սպառազէնս. և այլ զօրս բա
զումս: *Եւ գնաց 'ի կողմանս ազով 78
տայ՝ մօտ քերէր առ դաշտիւն. զի յու
սացեալ էր 'ի զօրս իւր. զկնի լինէր նր
յօնաթան տալ մարտ պատերազմի:
*Նա եթող հազար հեծեալ 'ի դարա 79
նի զհետ նր. *Իբրև ետես յօնաթան. 80
եթէ դարան գործեցին զհետ նորա.
եկին՝ փակեցին՝ պաշարեցին զամրոց
դարանակալացն. և շուրջ զնոքօք ար
կին պատնէշ. և կային՝ պահէին յա_
ռաւօտէ մինչ յերեկոյ. ոստ հրաման
ետ նր յօնաթան: *Աստակեցան՝ 81
տաժանեցան հեծեալքն. և լուծան:
*Զօղ ուղի կալաւ շմաւօն գնդիւն 82
իւրով. և գայր ձորձորակին 'ի վր. և
անկանէր զնոքօք ձանձրացեալք՝ մինչ
դեռ նոքա կային լուծեալք՝ անկա_
նէր 'ի վր. զբազումս 'ի դարանին անդ

83 սատակէր: *Զբազումս հեծելազօրս
փախստեայս ընդ երեսս դաշտին ա_
ռաջի երեսաց իւրոց տանէր. հասու_
ցանէր մինչև 'ի կողմանս ազովտայ.
այնչափ շտապ տագնապի 'ի վերայ հա
սուցանէր. զի փախստեայք գնային
'ի մեհեանն դագոնայ ամրանալ անկա
84 նէին: *Հասանէր յօնաթան զօրօքն
հանդերձ. պատէր զմեհեանն դագօ
նայ ամրացելօքն հանդերձ այրէր
85 հրով: *Եւ եղեն անկեալքն 'ի սրոյ՝
այրեցելօքն հանդերձ՝ իբրև արք ութ 8000
86 հարիւր: *Զուեաց՝ խաղաց՝ գնաց
յօնաթան անտի. և եկն բանակեցաւ
'ի կողմանս ասկաղօնայ. եկին՝ ելին՝
'ի քաղաքէ անտի ընդառաջ նմա մե_
87 ծաւ փառօք: *Եւ դարձաւ յօնաթան
յեմ գնդաւն իւրով. և բազմաւ աւ
արաւ. զի բերէր զկապուտ կողոպուտ
88 բազում թշնամեաց: *Եւ իբրև լուաւ
աւ զայս աղէքսանդրոս. յաւել փա_
ռաւորել առաւել ևս զյօնաթան:
89 *Եւ ետ տանել նմա շինդ ոսկի. զոր
օրինակ օրէն էր ունել եղբարց թագա
ւորին. և ետ նմա զակկարօն ամ սահ
մանօքն հանդերձ 'ի ժառանգութի:

ԳԼ. ԺԱ.

1 Եւ թագաւորն եգիպտացւոց զօ_
րաժողով լինէր. կուտէր զօրս
բազումս իբրև զաւազ առ ափն ծո_
վու. և նաւս բազումս. և խնդրէր նա
ունել զարքայութիւն աղէքսանդրեայ
նենգութբ. և յաւելուլ յիւր արքայ_
2 ութին: *Եւ ել ընդ կողմանս սոր_
րեստանեայց բանիւ խաղաղութե. և
նոքա զդուռն բանային նմա. և ընդ
առաջ երթային նր՝ քանզի պատուէր
էր յաղէքսանդրէ յարքայէ. քանզի ա_
3 ներ էր նր: *Եւ իբրև մտանէր պտողո
մէոս 'ի քաղաքսն. յիւրոց զօրացն պա
հապանս թողոյր յիւրաքանչիւր քա_
4 ղաքաց: *Իբրև եկին՝ մերձեցան նք
'ի քաղաքն ազովտացւոց. ցուցին նմա
զմեհեանն դագօնայ այրեցեալ. զքա
ղաքն՝ և որ շուրջ զիւրև էին այրե_
ցեալ՝ 'ի ժամանակի պատերազմի. և
զդիակունս՝ որ այրեցեալ էր՝ բերեալ
կուտէր կոյտս կոյտս 'ի վերայ ճանա
5 պարհին: *Եւ պատմէին առաջի ար
քային. զորինչ միանգամ գործեաց
յօնաթան. և յաչաց հանէին զնա.
և թագաւորն լռիկ կայր:
6 *Եւ եկն յանդիման եղև յօնաթան
թագաւորին 'ի քաղաքն յոպպէացւոց
փառօք մեծօք. ողջոյն ետուն միմ_
եանց. և եղեն այն օր առ միմեանս:
7 *Եւ գնաց յօնաթան ընդ արքային
մինչև

մինչեւ 'ի կողմանս գետոյն, որ կոչի ալզատ։ եւ դարձաւ անդրէն յօնաթան յեմ։ 8 *Իսկ արքայ պտղոմէոս տիրեաց 'ի վերայ քաղաքացն ծովեզերեայց՝ մինչ 'ի քաղաքն սելեւկիացւոց. եւ խորհէր 'ի վերայ աղեքսանդրեայ խորհուրդս չարութեան։ 9 *Եւ արձակեաց նա հրեշտակս առ դեմետր արքայ՝ եւ ասէ. եկ՛ ուխտ դիցուք ընդ միմեանս. եւ դաշինս կռեսցուք. եւ տաց քեզ զդուստր իմ՝ զոր ունի աղեքսանդրոս արքայ. եւ տիրեսցես դու 'ի վն արքայութեան հօր քոյ։ 10 *Զի զղջացեալ եմ ես. թէ ընդէ՞ր ետու ես զդուստր իմ նմա կնութեան. զի խորհեցաւ նա 'ի վերայ իմ մահ։ 11 *Եւ այսպէս յաշաց հանէր զնա. զի իւր աչն եղեալ էր տէրութեան նորա։ 12 *Եւ եհան զդուստրն. եւ ետ դեմետրի. եւ խոտորեցաւ յաղեքսանդրէ. եւ յայտնեաց զթշնամութի իւր. եւ եկն եմուտ պտղոմէոս. եւ տիրեաց նա 'ի վն քաղաքացն. եւ սելեւկեայ ծովեզերեայց։ (եւ խորհէր չարութի 'ի վն աղեքսանդրու։) 13 *Եկն եմուտ 'ի քաղաքն անտիոքացւոց. եւ եդ զթագ ասիացւոց. եւ պսակեցաւ կրկին՝ թագաւն ասիացւոց, եւ թագաւն եգիպտացւոց։ 14 *Նայց աղեքսանդրոս արքայ էր 'ի կողմանս կիւլիկեցւոց 'ի ժամանակին յայնմիկ. զի ապստամբք էին մարդիկն 'ի նմանէ։ 15 *Եւ լուաւ աղեքսանդրոս. դիմեաց գալ 'ի վերայ նորա մարտի պատերազմի. եւ ել պտղոմէոս ընդ առաջ նր զօրօք բազմօք. եւ դարձոյց զնա 'ի պարտութի։ 16 *Եւ փախստեայ լինէր աղեքսանդրոս 'ի կողմանս արաբացւոց. զի անդ թաքիցի, եւ ապրեսցի 'ի նմանէ։ եւ արքայ պտղոմէոս բարձրացաւ։ 17 *Եւ եկն զաբելէլ արաբացիկ. եհատ զգլուխն աղեքսանդրեայ. եւ ետ տանել պտղոմէոսի արքայի։ 18 *Եւ պտղոմէոս մեռաւ յաւուրն երրորդի. եւ որք էին զամրօքն. սատակեցան յամրականացն։ 19 *Եւ թագաւորեաց դեմետր. յամին հարիւրորդի վաթսներորդի եօթներորդի։ 20 *Ընդ աւուրսն ընդ այնոսիկ ժողովեաց յօնաթան զօրս 'ի հրէաստան՝ դալ մարտ դնել զբերդաւն. որ յեմ էր։ կազմեցին զնովաւ շուրջ մեքենայս բազումս։ 21 *Ապա գնացին ոմանք՝ որք թշնամիք էին ազգին հրէից՝ արք անօրէնք պատմել թագաւորին. եթէ յօնաթան մեքենայս կազմեալ՝ շուրջ զբերդաւն պատեալ՝ յառնուլ պատրաստեալ է։ 22 *Իբրեւ լուաւ՝ բարկացաւ յոյժ. չուեաց՝ եւ եկն 'ի պտղոմէս.

ետ հրովարտակս առ յօնաթան. զի մի՛ եւս զբերդն շուրջ պաշարեալ պահիցէ. այլ ինքն յարուցեալ վաղվաղակի առ նա հասանիցէ՝ 'ի պտղոմէացւոց քաղաքն. զի անդ յանդիման լիցին միմեանց։ 23 *Իբրեւ լուաւ յօնաթան՝ եւս քանզի սնոտել հրամայեաց զպահ բերդին. եւ ինքն էառ արս ընտիրս իմաստունս 'ի ծերակոյտ ժողովրդենէ անտի. եւ 'ի քահանայից անտի։ 24 *Հանդերձեցաւ պատարագօք. ոսկւով. եւ արծաթով. եւ եդ զանձն 'ի մահ. գնաց յանդիման լինել թագաւորին 'ի քաղաքն պտղոմէայցւոց։ եւ եգիտ նա շնորհս 'ի նմանէ։ 25 *Թէպէտ եւ բազումք էին յանօրինաց անտի ամբաստան զնմանէ։ 26 *Եւ մեծարեաց զնա թագաւորն որպէս առաջինքն իւր. եւ բարձրացոյց զնա յոյժ առաջի ամենայն բարեկամաց իւրոց։ 27 *Եւ կարգեաց նմա զիշխանութի քահանայապետութեան. եւ որ ինչ այլ ինչ պատիւս ունէր յառաջ քան զնա։ կացոյց՝ կարգեաց զնա ընդ առաջին բարեկամս։ 28 *Եւ աղաչեաց յօնաթան զարքայն. զի ազատ արասցէ զհրէաստան. եւ զերեսին կուսակալութիս. եւ զշամրին։ եւ յանձն էառ նա՝ տալ նմա երեք հարիւր քանքար։ 29 *Եւ հաճոյ թուեցաւ թագաւորին. եւ վն այսր ամի հրաման ետ հրովարտակս տալ առ յօնաթան օրինակաւս այսուիկ։ 30 *Արքայ դեմետր. առ յօնաթան եղբայր՝ ողջոյն։ 31 *Զպատճէն հրովարտակին այսորիկ գրեցաք մեք առ ղասթենէս եղբայր մեր. նովին օրինակաւ. եւ առ ձեզ գրեցաք՝ զի գիտասջիք։ 32 *Արքայ դեմետր. առ ղասթենէս հայր՝ ողջոյն։ 33 *Ազգին հրէից՝ օգնական՝ նիզակակցի՝ ուխտակալ բարեկամաց մերոց. իրաւունս համարեցաք դիւրել՝ բարիս առնել փոխանակ արդարութե միամտութեն, զոր պահեցին նոքա առ մեզ։ 34 *Կարգեցաք մեք զսահմանս հրէաստանի. եւ զերիս օրէնսն՝ ափարիմ. եւ ղուդայ. եւ ռաթամին յաւելցին 'ի հրէաստանի 'ի կողմանցն շամրինի. եւ ամ որինչ հասի օրէն գայր 'ի նոցանէ. լիցի այն պաշտօնէից յերուսաղէմ. փոխանակ արքունականն մտից. որ գայր 'ի նոցանէ ամ յամէ յարմտեաց երկրին՝ եւ 'ի բերոյ ծառոցն պտղոց։ 35 *Եւ այլ որինչ տարազ արքունի. կամ՝ տասանորդք. կամ մաքս. կամ որինչ մուտք յարքունիս իցեն. կամ՝ բաժ աղից. կամ տարազ պսակաց։ 36 *Զայս ամ թողցուք 'ի նս. եւ նոցա մի՛ մի ինչ յայսցանէ անար

դեալ դացի մինչև յաւիտեանս ժամա նակաց: 37 *Արդ ձեզ փոյթ լիցի առնել պատճէն մի հրովարտակիդ՝ և տալ ՚ի յօնաթան. զի դիցէ ՚ի գանձատան սրբութեան ՚ի գլխոյն վայրի ՚ի նշանաւոր տեղւոջ: 38 *Իբրև ետես դեմետր արքայ՝ եթէ հնազանդեցաւ ամ երկիր առաջի նր. և ոչինչ էր յաշխարհի. որ ընդդէմ դառնայր հրամանաց նր. հրաման ետ արձակել զզօրսն յիւրաքանչիւր տեղիս. բայց ՚ի զօրաց ազգաց հեռաւորաց. և ՚ի մարզիկ գնդէ կղզեաց կղզեաց ոք. և ՚ի թշնամութի դարձան ամ զօրք ազգաց ընդ նմա: 39 *Տրիփոն անուն՝ էր աղէքսանդրեան տոհմին. իբրև ետես. եթէ զօրքն ամ տրտունջ են զդեմետրեաւ. գնաց նա առ իմաղկուէ արուայիկ՝ որ սնուցանէր զանտիոքոս զպատանեակն աղէքսանդրի: 40 *Եւ առ նմա կանխէր. զի տացէ նա ցնա զմանուկն. և ածցէ՝ և թագաւորեցուսցէ ՚ի տեղի հօր իւրոյ. և պատմեաց նմա որինչ միանգամ գործս գործեաց դեմետր. և զամ թշնամութիս՝ որք միանգամ գոռային զօրքն. և անդ լինէր առ նմա աւուրս բազումս: 41 *Առաքեաց յօնաթան առ դեմետր արքայ. զի հրաման տացէ ի ջուցանել զզօրսն. որք ՚ի միջնաբերդի անդ էին. և որք յամուրս անդ էին. զի էին նոքա թշնամութբ ընդ իղի: 42 *Եւ առաքեաց դեմետրոս առ յօնաթան՝ և ասէ. ոչ զայդ միայն արարից քեզ, և ազգի քում, այլ փառօք փառաւորեցից զազգ քո եթէ ժամանակ միայն գտցի: 43 *Արդ դու բարւոք արասցես. առաքեսցես առ իս գունդ մի ՚ի թիկունս. զի զօրքս աւասիկ յինէն յետս կացին: 44 *Իբրև լուաւ զայն յօնաթան. վաղվաղակի գունդ մի յերից հազարաց արս ընտիրս սպառազէնս արձակեաց ՚ի թիկունս թագաւորին ՚ի քաղաքն անտիոքացւոց. և ուրախ եղև թագաւորն ՚ի հասանել նոցա ՚ի ձեռս նր: 45 *Իբրև զայն լուան քաղաքացիքն. ժողովեցան յիւրաքանչիւր տեղւոջէ ՚ի մէջ քաղաքին՝ իբրև բիւրք երկոտասանք. այն ինչ յարձակեալ էին ՚ի վր թագաւորին. կամէին անդէն սպանանել: 46 *Եւ նա խոյս ետ ՚ի նոցանէ. և նոքա առին վաղվաղակի զկիրճս ամ գնացից քաղաքին. մարտ եդին. և սկսան մաքառել: 47 *Ապա եղև իէլեան գնդին. կուտեցան ՚ի վր ապարանից թագաւորին. ձայն ետուն միմեանց. և սփռեցան ընդ ամ քաղաքն: 48 *Իբրև հարին՝ սպանին՝ և կոտորեցին արս իբրև տասն հազար. հրձիգ արարին զամ փայտակերտս զապարանից նորա. և զինչս՝ և զստացուածս նց առին յաւարի. ար կին յիւրեանս զթագաւորն. և ապրեցուցին զնա ՚ի ձեռաց նց: 49 *Իբրև ետես միաբանեալ գունդն քաղաքին. եթէ զօրացաւ գունդն իէլեան ՚ի վր նց. և կամակար յաղթեցին նց. լքան. նուաղեցան. և աղաչեցին ՚ի խորհուրդս իւրեանց. ՚ի ձայն բարբառոյ ողոքանաց սկսան աղաղակել առ թագաւորն՝ և ասեն: 50 *Ձեռն տուր մեզ. և դադարեսցէ գունդս մոլեկան ՚ի կոտորածէ քաղաքիս: 51 *Օայն բանս ասէին. և զիւրաքանչիւր զզէնս առ ոտս պատերազմողացն ընկենուին. և բարձրանայր փառօք գունդն իէլեան առաջի թագաւորին. և առաջի ամ զօրաց նր. և դառնային անդրէն յէջմ անուամբ մեծաւ և բազմաւ աւարաւ: 52 *Եւ նստաւ դեմետր արքայ յաթոռ տէրութե իւրոյ. և սարսեցաւ երկիրն ամ առաջի նր: 53 *Եւ ստեաց իէլացւոցն. յամի որինչ խոստացաւ նա նց. և ամենևին օտարացաւ յաչս յօնաթանու. և ոչ հատոյց նմա ըստ միամտութե վաստակոց նր: 54 *Յետ այսորիկ դարձաւ տրիփոն, և պատանեակն անտիոքոս ընդ նմա թագաւորեալ՝ և նստէր յաթոռ տէրութե: 55 *Եւ առ նա ժողովեցին զօրքն ամ. զոր ցրուեալ էր դեմետրեայ. և ետուն մարտ պատերազմի ընդ դեմետրեայ. և փախուցին զնա վատթարեալ: 56 *Առին՝ էառ զգազանսն տրիփոն. և կալաւ զքաղաքն անտիոքացւոց: 57 *Հրաման ետ հրովարտակ առնել մանուկն անտիոքոս առ յօնաթան՝ և ասէ. կացուցեալ իմ զքեզ ՚ի գործ քահանայապետութե. և հաստատեալ իմ զքեզ ՚ի վր չորեցուն օրինաց. և կարգեցաք զքեզ ընդ բուն և ընդ առաջին բարեկամս մեր: 58 *Եւ ետ տանել նմա նուագս ոսկիս՝ և սպասս տաճարին. և ետ նմա իշխանութի ըմպել ոսկի նուագօք. արկանել ծիրանիս. և իշխել կրել նշան. շքել ըստ նշանի թագաւորաց: 59 *Եւ զշմաւոն զեղբայր նր հրաման ետ իշխան և զօրավար կացուցանել կողմանցն ծուրայ մինչև ՚ի սահմանս եգիպտացւոց: 60 *Եւ ել յօնաթան շրջիլ յայնկոյս յորդանան գետոյ՝ և ընդ քաղաքսն. և ժողովեցան առ նա ամ զօրք ասորւոց ՚ի թիկունս. և եկն նա ՚ի կողմանս ասկաղօնայ. և ելին նմա քաղաքացիքն ընդ առաջ մեծաւ գովութբ: 61 *Անտի գնաց ՚ի գազայ՝ և գազացիքն փակեցին նմա ըզդրունսն գազայ. նստաւ շուրջ զնոքօք. և հրձիգ արար զաւանս նց. և զինչս

և՝

արաբ

[illegible]

տասն

բիւրս

զկեղ

եւ՝ և զստացուածս նոցա վարեցին 'ի գերութիւն : 62 * Ապա եկին դաղացիքն. առաջի կացին՝ ձեռն ետուն նմա. և մատուցին զորդիս իշխանացն իւրեանց 'ի պատանդութիւն. և նա եառ՝ և ետ տանիլ զնոսա յերուսաղէմ. և ինքն եանց ընդ երկիրն 'ի կողմանս դամասկեայ : 63 * Եւ լուաւ յոնաթան, եթէ հասին իշխանքն դեմետրեայ 'ի կադէս՝ 'ի կողմանս գալիլեացւոց զօրօք բազմօք. իբրև կամէին իմն թէ փոխեսցուք զնա 'ի գործոյ անտի : 64 * Եւ եթող զեղբայր իւր զշմաւոն յերկրին վերայ. և ինքն գնաց ընդ առաջ նոցա : 65 * Եւ շմաւոն հասանէր պատերազմաւ 'ի վերայ բեթսուրայ. և պաշարէր զնա աւուրս բազումս. և յարգել արկանէր զնոսա : 66 * Աղաչել սկսան նոքա զնա. զի դաշինս արասցէ ընդ նոսա. նա ետ ձեռն նոցա. և եհան զնոսա անտի. և կացոյց անդ նա պահապանս քաղաքին : 67 * Եւ յոնաթան զօրօքն իւրովք եկն՝ և բանակեցաւ 'ի վերայ ջուրցն գեննեսարեթայ. կանխեաց նա ընդ առաւօտն 'ի դաշտն նասօրայ : 68 * Եւ գունդ մի այլազգեաց ընդ առաջ եղև 'ի դաշտի անդ. և դարան գործեցին 'ի վերայ նորա. կէսքն 'ի դարան մտին. կէսքն 'ի դիմի հարան նմա : 69 * Եւ յարեան դարանակալքն յիւրաքանչիւր տեղեաց՝ զհետ եղեն նոցա. և զյոնաթան 'ի մէջ արկին զօրօքն հանդերձ : 70 * Եւ արարին զզօրսն յոնաթանու փախստեայս. և ոչ մնաց առ նմա. բայց միայն մատաթիա աբեսաղոմեայն. և յուդաս կափեան զօրավարք զօրացն : 71 * Ձեռն զձեօք արկանէր յոնաթան. զպատմուճանն պատառէր. հող 'ի գլուխ լինէր : 72 * Ի վերայ յարձակէր բարկութեամբ բազմաւ. և 'ի պարտութիւն մատնէր զնոսա : 73 * Յայնմ ժամանակի փախստեայքն ամենեքին անդրէն 'ի նոյն դառնային. հալածական զթշնամին առնէին առաջի իւրեանց՝ մինչև 'ի բանակն իւրեանց 'ի կադէս. եկին՝ և անկան զբանակաւն այլազգեաց : 74 * Հարին՝ կոտորեցին յաւուր յայնմիկ իբրև երիս հազարս հեծելոց սպառազինս. և դարձաւ յոնաթան յերուսաղէմ։

## ԳԼ: ԺԲ:

1 Իբրև ետես յոնաթան եթէ ժամանակն յաջողեալ է նմա. կոչեաց արս ընտիրս. առաքեաց զնոսա 'ի քաղաքն հռոմայեցւոց. երթալ՝ նորոգել զուխտ հաշտութեան ընդ նոսա : 2 * Եւ զսպարտացիս, և ընդ այլ տեղիս տեղիս՝ արար հրովարտակս ըստ նմին օրինակի : 3 * Գնացին հրեշտակքն. և եկին՝ հասին 'ի քաղաքն հռոմայեցւոց. և յանդիման եղեն նոցա 'ի տաճարին խորհրդոյ. և ասեն. յոնաթան քահանայապետ՝ և ազգն հրէից առաքեցին զմեզ առ ձեզ նորոգել զհաշտութիւն առաջին. լինիլ նիզակակից և թիկունք ըստ օրինակին 4 առաջնում : * Յանձն առին. հաճեցան. և ետուն հրովարտակս 'ի տեղիս տեղիս. զի յուղարկեսցին նոքա խաղաղութեամբ 5 յերկիրն հրէաստանի : * Եւ այս պատճէն հրովարտակացն է՝ զոր գրեաց յոնաթան առ աշխարհակալս իշխանս. և առ կուսակալս նոցա :

6 Յոնաթան քահանայապետ ծերակոյտ ժողովրդեամբ հանդերձ՝ և քահանայք. գունդ և այլ ազգին հրէաստանեայց՝ առ սպարտացիս եղբարս 7 մեր՝ ողջոյն : * Որանզի յառաջ իսկ առաքեցան առ ոնիայ քահանայապետ 'ի դարեհէ արքայէ 'ի թագաւորէ ձերմէ՝ եթէ նիզակակիցք եղբարք մեր՝ որպէս մեզ պատճէնքս ցուցանեն 8 : * Ընկալաւ ոնիա զայրն՝ որ առաքեցաւ՝ մեծաւ փառօք. և եառ 'ի ձեռն հրովարտակ մի. ուր նշանակէր զմեզ նիզակակիցս՝ և թիկունս իւր. 9 և սիրելի բարեկամս : * Արդ՝ մեք քան զի լի և ոչ կարօտեալք մխիթարեցաք 10 ձերովք հրովարտակօքս : * Առաքել նորոգել միաբանութեամբ զնոյն հաւատութիւն հարազատութեան. զի մի օտարասցուք մեք 'ի ձէնջ. զի բազումք են այնք ժամանակք. որք անցին 'ի վերայ հին հաւատութեցն. զորս դուք առ մեզ արա 11 րէք : * Արդ մեք անպակաս յամժամանակի 'ի տօնս տարեկանաց՝ և յայլ աւուրս արժանաւորս՝ յիշեմք զձեզ 'ի վերայ պատարագացն. զորս մատուցանեմք. յիշեմք յաղօթս մեր որպէս արժան՝ և 12 օրէն է յիշել զեղբարս մեր : * Եւ ցն 13 ծամք մեք ընդ փառս ձեր : * Արդ՝ ըզմեօք պատեցան աւասիկ բազում նեղութիւնք պատերազմաց. մարտ եդին աւասիկ թագաւորք՝ որք շուրջ զմեօք 14 էին : * Եւ մեք ոչինչ կամեցաք արդ նեղել զձեզ. ոչ զձեզ, և ոչ՝ որք շուրջ զձեօքդ բարեկամք նիզակակիցք մեր 15 են՝ յայս մարտս պատերազմի : * Ունի դոյր մեզ օգնութիւն յերկնից. և ապրեցաք մեք 'ի ձեռաց թշնամեաց մերոց. և 'ի պարտութիւն մատնեցան թշնամիք 16 մեր : * Արդ ընտրեցաք մեք զնումենիոս զանտիոքեան. և զանթիպատրոս յասոնեանց. և առաքեցաք առ հռոմայեցիս. զի նորոգեսցեն զառաջին հաշտութիւն հաւատութեան. թիկունս՝ բա 17 րեկամութիւն եղբայրութեան : * Տուաք նոցա պատուէր անցանել առ ձեզ. տալ

նոցա ձեզ ողջոյն. և մատուցանել
թուղթս՝ վն նորոգութե սիրոյ եղբայ
րութե մերոյ։ *Արդ՝ բարւոք առնէք 18
հրաման տալ. և պատասխանի առնել
մեզ։ *Այս պատճէն հրովարտա_ 19
կացն. զոր արարին անդրէն առ ոնիայ
քահանայ։ *Արեայ սպարտիացւոց 20
առ ոնիա մեծ քահանայապետ ողջոյն։
*Գտան հինք մատեանք վասն սպար 21
տիացւոց և հրէաստանեայց՝ զի են եղ
բարք հաւասարք. և են յաբրահամէ։
*Արդ՝ յորմէ հետէ զայս այսպէս գի_ 22
տացաք. բարւոք առնիցէք հանապա
զորդ գրել առ մեզ. վն խաղաղութե
և ողջունի ձեր առ մեզ։ *Այլ մեր առ 23
ձեզ ինչք և ստացուածք՝ և ամ անա_
սուն մեր ձեր է. ոմ և ձերն մեր է. արդ
տամք զայս պատուէր. զի հանապազ
պահեսջիք զայս առ ձեզ։ *Այլ լուաւ 24
յոնաթան. եթէ դարձան իշխանքն
դեմետրեայ զօրօք բազմօք քան զառա
ջինն. գալ 'ի վր նր 'ի մարտ պատերազ
մի։ *Ու արար յեէմէ. խաղաց 'ի վր 25
նր՝ և եհաս. 'ի դիմի հարաւ 'ի կողմանս
նամաթիտայ վայրաց. քանզի չետ
թոյլ նմա հասանիլ՝ յուզել զերկիր
իւր։ *Արձակեաց նա լրտես 'ի բա_ 26
նակ նց. և պատմէին նմա այսպ՝ եթէ
պատրաստեալ քեն գիշերայն անկա_
նիլ 'ի վր մեր։ *Այլ իբրև արեւն 'ի 27
մուտս եղև. հրաման ետ յոնաթան զօ
րացն. զի վառեալք՝ արթունք՝ և պատ
րաստեալք՝ միագունդ կայցեն մինչ 'ի
յառաւօտ 'ի մարտ պատերազմի. պա
րեկապանս հանին. շուրջ զիւրեամբք
փակեցին. ( և ինքեանք կային պատ_
րաստեալք 'ի մարտ պատերազմի։ )
*Իբրև լուան թշնամիքն՝ եթէ գիշե 28
րայն պատրաստեցան 'ի պատերազմ.
երկեան՝ զարհուրեցան՝ բեկան 'ի
սիրտս իւրե. խիտ առ խիտ խարոյկս
վառեցին ընդ ամ տեղիս. և ինքեանք
գիշերայն փախստեայք մեկնեցան։
*Այլ ոչ գիտաց յոնաթան զօրօքն հան 29
դերձ զփախուստն նց. զի հայէր ընդ
խարոյկսն բորբոքեալս. համարէր թէ
առ եւեղ իցեն։ *Ապա թէպէտ և 30
զհետ եղև նց՝ չկարաց հասանիլ. քան
զի անցեալ էր նոցա ը գետն աղատ։
*Ապա դարձաւ 'ի նոցանէ յոնաթան 31
'ի վր արաբացւոցն. որք անուանեալք
կոչին զաբդեցիք՝ հարկանէր՝ սատա_
կէր՝ վանէր զբանակս նց. և առնոյր
զինչս և զստացուածս նոցա յաւարի։
*Այլ դառնայր 'ի կողմանս դամաս_ 32
կեայ։ *Այլ հասանէր յասկաղոն. և 33
առնոյր զամուրս ամ, որք շուրջ զնո
վաւն էին. և դառնայր 'ի կողմանման

յոպպէացւոց. արագէր. և զօրս 'ի
34 ներքս մուծանէր։ *Ու լուաւ թէ ամ
բոխանքն ձեռն տային 'ի դեմետր. պա
հապանն՝ ոստիկանս 'ի վր կացուցա_
35 նէր։ *Այլ դարձեալ յոնաթան. զօր_
ընտիր լինէր. զծերակոյտն 'ի խոր_
հուրդ կոչէր. կամէր զամուրսն շինել
36 հրէաստանի։ *Այլ բարձրացուցանել
'ի բարձրութի 'ի մէջ միջնաբերդին.
և քաղաքն 'ի բարձրութի մեծ՝ անջր
պետել կամէր ընդ նմա և ընդ քաղաքն.
զի առանձինն լիցին. զի մի տայցեն՝ և մի
առնուցուն. մի գնիցեն. և մի վաճառի
37 ցեն։ *Այլ ժողովեցին շինել զքաղաքն.
և ինչ որ անկեալ էր 'ի պարսպացն յուղ
խաջուրն հեղեղատաց 'ի ծմակին կող
մանն անտի՝ որ անուանեն կոչի փակն_
38 թա։ *Այլ շմաւօն սկսաւ շինել զադե
դայ յափիղայ։ ամրացոյց զնա. և դը_
րունս եդ նմա. և նգօք հաստատեաց
39 զնա։ *Այլ խնդրէր տրիփոն թագա_
ւորել կողմանցն ասիացւոց. դնել թագ՝
և ձգել զձեռն 'ի վր արքային անտիո
40 քացւոց։ *Բայց երկեաւ. զանգի_
տեաց, թէ գուցէ յանձն ոչ առնուցու
յոնաթան. և խաղայցէ 'ի վր նր մար
տիւ պատերազմի. և խնդրէր նա հնարս
41 ըմբռնել զնա և կորուսանել։ *Խաղաց՝
գնաց՝ և եկն 'ի կողմանս բեթսանայ.
և ել ը առաջ նր յոնաթան քառասուն
հազարաւ ընտիր ընտիր վառելով պատ
րաստեալ պատերազմի՝ և եկն. եհաս
42 և նա 'ի բեթսան։ *Այլ ետես տրի_
փոն. եթէ հասեալ է յոնաթան զօ_
րօք բազմօք. և զանգիտեաց ձգել
43 զձեռն իւր 'ի նա։ *Ապա էառ՝ ընկա
լաւ զնա փառաւորութբ. և յանդիմա
նեաց զնա ամ բարեկամացն իւրոց. և
ետ նմա պարգևս. և հրաման ետ զօ_
րացն իւրոց՝ զի հնազանդ լիցին նմա։
44 *Խօսիլ սկսաւ ընդ յոնաթանու՝ և
ասէ. ընդէր զայդ չափ զօրս կոտորե_
ցեր. զի ոչինչ գոյր 'ի միջի գործ պատե
45 րազմի։ *Արդ արձակեա դու զզօրդ
յիւրաքանչիւր տեղիս. և ընտրեա դու
ընդ քեզ արս սակաւս. որք ընդ քեզ
հանապազ շրջիցին. և եկ դու ընդ իս
'ի քաղաքն պտողոմեացւոց. և տաց
քեզ զնա 'ի ձեռս. և զայլ ամուրս զօ_
րօքն հանդերձ, ոմ 'ի ձեռն լիցի. և ես
դարձայց անդրէն. զի վասն այսր իսկ
46 եկեալ եմ։ *Այլ հաւատաց նա 'ի նա.
և արար ոմ հրամայեաց նմա. և արձա
կեաց զզօրսն յիւրաքանչիւր տեղիս
47 յերկիրն հրէաստանի։ *Այլ եթող
առ իւր 'ի նոցանէ իբրև արս երիս հա_
զարս. դարձեալ եթող 'ի նոցանէ զեր
կուս հազարս յերկիրն գալիլեացւոց.
և

և ինքն գնաց ը̃ նմա հազարաւ միով։ 48 *Եւ իբրև եմուտ յոնաթան 'ի քաղաքն պտղոմեացւոց. առին զդրունս քաղաքացիքն. և զնա 'ի ներքս արգելին. և զհանին ընդ սուր զամենեսին. որք ընդ նմա մտեալ էին։ 49 *Եւ արար տրիփոն զօրս 'ի վերայ զօրացն նորա. որք էին յերկրին գալիլեացւոց՝ և 'ի դաշտին մեծի. զի երթիցեն՝ սատակեսցեն զա̃մ զօրս յոնաթանու։ 50 *Նոքա իբրև գիտացին. թէ նա 'ի ներքս արգելաւ՝ և ամենեքեան կորեան՝ որք ը̃ նմա էին. մխիթարեցին զանձինս. և գնացին միագունդ միաբանութ̃բ 'ի մարտ պատերազմի։ 51 *Իբրև տեսին զօրականքն. որք 'ի վերայ երթեալ էին. թէ սրտի մտօք 'ի վերայ իւրաքանչիւր ոգւոյն մարտնչէին՝ զանդիտեցին. թողին, և դարձան։ 52 *Եւ սոքա եկին՝ հասին յերկիրն հրէաստանի խաղաղութ̃բ. կոծ առին՝ լացին զյոնաթան և զզօրսն. որք ընդ նմա էին. և էին յերկիւղի մեծի. և նստէր 'ի սուգ ամենայն իէլ. և լային զյոնաթան։ 53 *Սկսան խնդրել ա̃մ հեթանոսք. որք շուրջ զնոքօք էին. սատակել զնո̃. զի ասէին այսպէս։ 54 *Ոչ է իք որ գլուխ՝ և իշխան 'ի վերայ նց̃. որ տայ ընդ մեզ մարտ պատերազմի. արդ եկա՛յք՝ հասցուք 'ի վերայ. ջնջեսցուք զյիշատակ նոցա յերկրէ։

## ԳԼ: ԺԳ.

1 Եւ լուաւ շմաւոն եթէ ժողովեաց տրիփոն զօրս բազումս գալ հասանիլ 'ի վերայ երկրին հրէաստանի և սատակել զնո̃։ 2 *Եւ ստուգեաց թէ ժողովուրդն յահի և յերկիւղի մեծի է. և ինքն եկեալ յերուսաղէմ, ժողովեաց զժողովուրդսն։ 3 *Մխիթարեաց զնոսա՝ և ասէ. դուք ինքնին գիտէք. որչափ գործ գործեցաք՝ ես և եղբարք իմ, և տուն հօր իմոյ. քանի՞ մարտ պատերազմի մղեցաք. կամ ո՞ր չափ նեղութ̃ համբերեցաք՝ 'ի վերայ սրբութ̃եց օրինացն և քաղաքիս։ 4 *Օ՛ի վ̃ն իլի՝ և ձեր ամենեցուն կորեան եղբարքն իմ ամենեքեան. և ես մնացեալ եմ միայն։ 5 *Եւ արդ՝ քա՛ւ լիցի անխայել՝ ապաշաւել զանձն իմ յա̃մ ժամանակս նեղութ̃. արութ̃ ինչ չեմ՝ լաւ քան զեղբարսն իմ։ 6 *Բայց սակայն զօրացայց խնդրել զվրէժ ազգի 'ի վ̃ր սրբութ̃եցն օրինաց. 'ի վ̃ր կանանց և որդւոց. զի աւասիկ ժողովեալ են հեթանոսքն ա̃մ, հասանիլ՝ սատակել զյիշատակս մեր յերկրէ։ 7 *Իբրև զայն խօսէր. զուարթացուցանէր, մխիթարէր զամենայն միտս ժողովրդեանն։ 8 *Եւ տուին պատասխանի. սկսան խօսիլ 'ի ձայն մեծ՝ և ասեն. դու ես մեր առաջնորդ փոխանակ յուդայի և յոնաթանու եղբարց քոց։ 9 *Մարտի՛ր զպատերազմն մեր. և զա̃մ որինչ ասես՝ հնազանդ լիցուք քեզ։ 10 *Եւ ժողովեաց նա զա̃մ արս պատերազմի. վաղվաղեաց՝ փութացաւ՝ և շինեաց զպարիսպն եէմի։ 11 *Եւ արձակեաց նա զյոնաթան զաբեսողոմեան զօրօք բազմօք 'ի քաղաքն յոպպէացւոց. և եհան նա անտի զպահապանսն. և ինքն եմուտ. ամրացաւ. և պահէր զնա։ 12 *Յետ այսորիկ խաղաց, գնաց տրիփոն 'ի քաղաքէն պտղոմեացւոց զօրօք բազմօք՝ գալ յերկիրն հրէաստանի. և ածէր ընդ իւր զյոնաթան 'ի զգուշութ̃ի պահպանութ̃ե։ 13 *Եւ շմաւոն բանակեալ էր 'ի դիդայ 'ի կողմանս դաշտին։ 14 *Եւ գիտաց տրիփոն, եթէ համբարձաւ շմաւոն փոխանակ յոնաթանու եղբօր իւրոյ. և պատրաստեալ է նա 'ի մարտս պատերազմի. արար հրեշտակս՝ և արձակեաց առ նա՝ և ասէ։ 15 *Վ̃ն արծաթոյն. զոր պարտէր յոնաթան յարքունիս՝ արգելեալ կայ աստ։ 16 *Արդ՝ տո՛ւր բերել զարծաթն հարիւր քանքար. և երկուս որդիս յորդւոց նորա տո՛ւր ածել առիս. զի մի՛ յորժամ արձակեսցուք. ապստամբ լիցի սա 'ի մէնջ։ 17 *Եւ գիտաց շմաւոն, թէ նենգու̃ խօսի նա ընդ նմա. ետ տանիլ զարծաթն և զպատանեակսն. դուցէ ինչ թշնամութ̃ի լինիցի ընդ ժողովուրդն և ընդ նա։ 18 *Եւ ասիցեն. եթէ ագահեաց յարծաթն. և չետ տանիլ զպատանեակսն. և այրն կորեաւ։ 19 *Արա ետ տանիլ զպատանեակսն՝ և զհարիւր քանքարսն։ և սակայն ստեաց. և ո՛չ արձակեաց զյոնաթան։ 20 *Եւ յետ այսորիկ եկն տրիփոն 'ի կողմանս երկրին շրջիլ՝ և սատակել զնոսա. և պատեցին զճանապարհն ադօրայ. և շմաւոն բանակաւն հանդերձ զառաջս ունէր նորա. յոր կողմ և երթայր նա։ 21 *Եւ որք 'ի միջնաբերդին յեէմ էին. յղեցին առ տրիփոն հրեշտակս. ստիպել զնա. զի եկեսցէ առ նոսա ընդ անապատն. և համբարս բերդին տրասցէ։ 22 *Եւ պատրաստեցաւ տրիփոն գնդաւն հանդերձ՝ գալ մտանել 'ի գիշերին յայնմիկ. և ձիւնաբեր եղև յոյժ. վ̃ն այնորիկ ոչ կարաց մտանել. չու արար. և եկն 'ի կողմանս գաղաադու։ 23 *Իբրև մերձեցաւ նա 'ի բասկամայ.

անդ սպան զՅօնաթան. և անդէն թաղեցաւ: 24 *Դարձաւ անտի տրիփոն՝ և ել յաշխարհ իւր: 25 *Եւ առաքեաց Շմաւոն՝ և եբարձ անտի զոսկերսն Յօնաթանու եղբօր իւրոյ. և բերին՝ և թաղեցին զնա 'ի Մովդիիմ' ի քաղաքն հարց իւրոց: 26 *Եւ ծեծին. լացին զնա ամենայն Իսրայէլ. և սուգ առին աւուրս բազումս: 27 *Եւ անդ շինեաց շինուած 'ի վերայ գերեզմանի հօր իւրոյ և եղբարց իւրոց. և բարձրացոյց զնա գործ քարկռի քարակոփ շուրջանակի: 28 *Եւ կանգնեաց 'ի վերայ նորա բրգունս դէմ յանդիման. և կացոյց անդ երիս վառեալս հօրն և եղբարցն դէմ ընդդէմ: 29 *Սեամբք բարձրութեան վանդակապատ. և արար իւր անունն յաւիտենից. և եդ զկողիւք վանդակին գործ քանդակի նաւաց նմանութիւն. զի երևելի կայցեն՝ որք անցանեն ընդ ծով նաւուք: 30 *Նա շիրմօք. զոր արարին 'ի Մովդիիմ մինչև յօրս յայս: 31 *Եւ տրիփոն գնայր նենգութեամբ ընդ արքայի անտիոքայ մանկան. և սպան զնա: 32 *Եւ թագաւորեաց ընդ նորա. և թագ եառ նա զասիացւոց. և արար հարուածս մեծամեծս յերկրի: 33 *Եւ շինեաց Շմաւոն զամուրսն հրէաստանի. բարձրացոյց պարսպօք. և կանգնեաց աշտարակս. դրամբք՝ և նգօք հաստատեաց. և պնդեաց զամուրսն համբարօք: 34 *Եւ կոչեաց Շմաւոն արս ընտիրս. և առաքեաց առ Դեմետր. զի արասցէ թողութիւն երկրին. զի ամ գործքն տրիփոնայ յափշտակութիւնք էին: 35 *Եւ առաքեաց Դեմետր թագաւոր ըստ բանիցս այսոցիկ. պատասխանի ետ նմա. և գրեաց հրովարտակս օրինակիւ այսմիկ: 36 *Դեմետր արքայ առ Շմաւոն քահանայապետ՝ առ բարեկամ թագաւորաց՝ և առ ծերակոյտ ազգին հրէից՝ ողջոյն: 37 *Պսակդ ոսկի՝ և զօրհնութիւն. զոր ետուք բերել մեզ՝ ընկալաք. և պատրաստ եմք առնել զխաղաղութիւն մեծ՝ և գրել առ իշխանս հարկահանաց. զի թողցին ձեզ պարտիքն: 38 *Եւ զոր միանգամ հաստատեցաք առ ձեզ՝ հաստատուն կացցէ. և ամուրքդ զոր շինեցէք՝ այդ ձեզ իսկ լիցին: 39 *Եւ թողեալ լիցի 'ի մէնջ ձեզ մեղք ակամայ մինչև յայսօր ժամանակի. և զպսակն՝ զոր պարտիք՝ և ինչ այլ ինչ որ մաքս եղանէ յԵրուսաղէմ. այլ մի՛ եղիցի: 40 *Եւ թէ որք պիտանիք իցեն ձեր. և արժանք իցեն 'ի մեր գիր մտանել՝ մտցեն համարձակ. և եղիցի մեզ ընդ ձեզ խաղաղութիւն: 41 *Յամին հարիւրորդի եօթանասներորդի բարձաւ լուծն հեթանոսաց յԻսրայէլէ անտի:

42 *Եւ սկսաւ ժողովուրդն գրել 'ի մատեանս իւրեանց. և 'ի կտակս վաճառաց իւրեանց. յամին առաջնորդի յամս Շմաւոնի մեծի քահանայապետի՝ առաջնորդի՝ և զօրավարի ազգին հրէից: 43 *Յաւուրսն յայնոսիկ պատեաց նա զքաղաքն Գազացւոց. և պաշարեաց զնա զօրօք. և արար անդ մեքենայս. և մատոյց 'ի պարիսպ անդր. և կործանեաց աշտարակ մի: 44 *Եւ ելին 'ի մեքենայէ անտի՝ և յարձակեցան 'ի ներքս 'ի քաղաքն. և եղև խռովութիւն յոյժ 'ի քաղաքի անդ: 45 *Եւ դիմեցին առ հասարակ քաղաքացիքն կանամբք և մանկտովք հանդերձ. ձիգ առեալ՝ և զձեռս պատառեալ՝ և զաղաղակ բարձեալ կարդային առ Շմաւոն: 46 *Եւ աղաչէին ձեռն տալ նոցա: զի մի՛ դատեսցէ զնոսա ըստ չարութեան նոցա. այլ ըստ ողորմութեան իւրում գթասցի 'ի վերայ նոցա: 47 *Եւ հաւանեցաւ Շմաւոն. և ցածոյց զպատերազմն. և հրամայեաց հանել զնոսա արտաքս քան զքաղաքն. և սրբեցին զապարանսն յամ աղտեղութեան պղծութեան կռոցն. և ապա եկն՝ եմուտ 'ի ներքս ցնծութեամբ և օրհնութեամբ: 48 *Եւ սրբեաց 'ի նմանէ զամ պղծութիւնս. և բնակեցոյց 'ի նմա արս՝ որք զօրէնսն պահիցեն. ամրացոյց և զնա. և շինեաց 'ի նմա բիւր ազգի գործած ապարանից: 49 *Իսկ որք 'ի միջնաբերդն էին յԵրուսաղէմ, արգելեալք նեղեալք՝ պաշարեալք կային. զի ոչ կարէին ոչ ելանել և ոչ մտանել. ոչ գնել. և ոչ վաճառել. և նեղեալք սովամահ լինէին. և բազումք 'ի նոցանէ սատակեցան: 50 *Աղաղակեցին առ Շմաւոն. աղաչէին կալ առաջի նոցա. նա ետ նոցա ձեռն. և եհան զնոսա անտի. և սրբեաց նա զմիջնաբերդն յամ պղծութեանց նոցա: 51 *Եւ եկն՝ եմուտ նա անդր 'ի քսաներորդի երրորդի ամսոյն, յերկրորդում ամսեանն. յամին հարիւրորդի եօթանասներորդի առաջներորդի մտանէր անդր՝ օրհնութեամբ գոհութեամբ ոստովք արմաւենեօք. 'ի ցնծութիւն փողոյ և սրնգի. զի խորտակեցաւ մեծ թշնամի 'ի տանէն Իլի: 52 *Եւ հրամայեաց ետ նա առնել զտօնն զայն, ամի ամի ըստ աւուրն այսմիկ՝ ուրախութեամբ՝ և ցնծութեամբ: 53 *Ամրացոյց նա զլեառն տաճարին, առ միջնաբերդաւն. և բնակեալ էր ինքն 'ի ներքս սեպհական գնդաւն հանդերձ: 54 *Եւ ետես Շմաւոն զՅօնաթան զորդի իւր, եթէ այր կատարեալ և 'ի չափ հասեալ է. եառ՝ և կացոյց զնա իշխան

զօրավար՝ առաջնորդ 'ի վերայ ամենայն զօրացն . և կացոյց զնա 'ի կողմանս Գազերայ։

## ԳԼ. ԺԴ.

Յամին հարիւրորդի եօթանասուն երրորդի երկրորդի . զօրաժողով լինէր Դեմետր արքայ . և անցանէր 'ի կողմանս Մարաց և Պարթևաց խնդրել իւր անտի թիկունս . զի եկեսցէ տացէ մարտ պատերազմի ընդ Տրիփոնայ։ 1 *Իբրև զայն լսէր Արշակ արքայ Պարսից և Պարթևաց, եթէ եկն՝ և եմուտ Դեմետր 'ի սահմանս աշխարհի նորա . արձակեաց նա մի յիշխանաց իւրոց՝ երթալ և ձերբակալ առնել զնա։ 2 *Գնաց նա՝ էհար և սատակեաց զզօրսն Դեմետրեայ . և առ զնա ձերբակալ . եկն՝ եած . կալաւ զԴեմետր առաջի Արշակայ։ և հրամայեաց կապել զնա 'ի կապանս և դնել 'ի բանտի։ 3 *Եւ դադարեաց 'ի խաղաղութի երկիրն զամ յաւուրս Շմաւոնի . և յաւելոյր բարիս 'ի բարեաց վերայ ազգին իւրեանց . տիրէր նա 'ի վերայ գաւառացն։ 4 *Եւ ժողովէր զգերիս բազումս . տիրէր 'ի վր կողմանցն Գազրօնայ՝ և Բեթսուրայ . և ականեանց։ 7 *Եւ գործէին զերկիր իւրեանց խաղաղութբ։ և երկիրն տայր զպտուղ իւր . և զամ փայտ ծառատունկ տայր զբեր իւր առատութբ։ 8 *Ծերք 'ի հրապարակս նստէին . ձառ արկեալ զբանից բարութե ընդ միմեանս խորհէին։ երիտասարդք ըզփառս զգեցեալք, զարդարեալք 'ի զարդ պատերազմի։ 9 *Զքաղաքս սնտէին համբարօք . և զանձինս պատրաստէին պատրաստութբ զարդու ամրութբ զինու . մինչև երթայր անուն փառաւորութե նորա մինչև 'ի ծագս երկրի։ 10 *Եւ առնէր խաղաղութի . և ցնծայր Իսրայէլ յուրախութի մեծ։ 11 *Եւ նստէին իւրաքանչիւր ընդ որթով իւրեանց՝ և ընդ թզենեաւ իւրեանց . և ոչոք զարհուրեցուցանէր զնոսա։ 12 *Եւ պակասեցան ամենեքեան . որք մարտնչէին ընդ նոսա յերկրէ . և թագաւորքն խորտակեցան յաւուրս իւրեանց։ 13 *Եւ նա հաստատեաց՝ և զօրացոյց զխոնարհս ժողովրդեանն՝ խնդրել զվրէժ օրինացն . և զամենայն չարս՝ և անօրէնս ջնջեաց յերկրէ։ 14 *Փառաւորեցոյց զսրբութիւն . և բազմացոյց զսպաս սրբութեանն։ 15 *Լուր եղև 'ի Հռոմ քաղաք՝ մինչև 'ի կողմանս Սպարտիացւոց, եթէ մեռաւ Յոնաթան . և տրտմեցան յոյժ։ 16

17 *Ր.ԱԼ իբրև լուան եթէ Շմաւոն եղբայր նր կայ 'ի գլուխ քահանայութե ընդ նր . և տիրեալ հաստատեալ ունի զքաղաքս և զգաւառս . որք 'ի նոսայն էին։ 18 *‖ Հրեշտակս արարին . և հրովարտակս գրեցին 'ի տախտակս պղնձիս . նորոգել զհին բարեկամութին . զոր ուխտեցին՝ և հաստատեցին առ Յուդայ՝ և առ Յոնաթան եղբայր նորա։ 19 *Եւ իբրև բերին՝ ընթերցան առաջի ժողովրդոյն Երուսաղէմի . և այս պատճէն հրովարտակացն . զորս առաքեցին Սպարտիացիքն։ 20 *Սպարտիացւոց իշխանք և առաջնորդք մեծաւ քաղաքաւ հանդերձ . առ Շմաւոն մեծ քահանայ . և առ ծերակոյտ իէլացւոց՝ և առ քահանայս . և առ ամ ժողովուրդ հրէից եղբարս մեր՝ ողջոյն։ 21 *Հրեշտակք . որք արձակեցան 'ի ձէնջ առ մեզ . պատմեցին մեզ վասն փառաց և պատուոյ ձերոյ . և ուրախ եղեաք 'ի գալստեան դոցա։ 22 *Եւ գրեցաք մեք զպատգամս ձեր 'ի մատեանս խորհրդոց գնդի մերոյ՝ օրինակ զայս։ Նումենիոս Անտիոքեան . և Անտիպատրոս Յասոնեան հրեշտակք հրէից . որք եկին առ մեզ նորոգել զբարեկամութին ընդ ազգի մերում։ 23 *Եւ հաճոյ թուեցաւ ամ Սպարտիացւոց ընդունել զարսն մեծաւ փառօք . և զպատճէն բանից նց դնել 'ի տեղի երևելի . 'ի մատեանս խորհրդոց գնդի Սպարտիացւոց։ և պատասխանի արարին հրովարտակացն առ Շմաւոն մեծ քահանայ։

‖ Մեր. 8.23. և 12. 1.

24 *Դարձեալ յետ այսց ժամանակաց . Շմաւոն հրեշտակս առնէր անդրէն 'ի Հռոմ մեծաւ պատարագաւ . և ոսկւոյ վահանաւ 'ի հազար քանքարէ . զի երթիցէ հաստատեսցէ զառաջին բարեկամութիւնն և թիկունս։

25 *Իբրև զայն լուան դունդքն հռոմայեցւոց . սկսան խորհիլ՝ և ասել . իսկ արդ զի՞նչ երախտեաց երախտիս դարձուսցուք Շմաւոնի՝ և որդւոց նորա։ 26 *Զի հաստատեաց նա և եղբարք իւր՝ և տուն հօր իւրոյ զայն առ մեզ բարեկամութիւն . հարկանելով էհար զթշնամիս իւր։ և հաստատելով հաստատեաց զմեզ ը̃ իւր 'ի բարեկամս և 'ի թիկունս։ և հաստեցին նմա ազատութիս . և գրեցին զայս 'ի տախտակս պղնձիս . և կանգնեցին նմա արձան 'ի լերինն Սիոնի։ 27 *Եւ այս պատճէն է գրոյն . զոր գրեցին։ յամին հարիւրորդի եօթանասներորդի երկրորդի . որ օր ութուտասն էր ամսոյն . 'ի վր ամին երրորդի առ քահանա-

նայա-

նայապետութեն շմաւոնի 'ի սամարէք ։ 28 *Առաջի մեծաց ժողովոց՝ քահանայից՝ ժողովրդեան՝ իշխանաց՝ ազգաց՝ և ծերակոյտ գաւառաց բազմաց. աղդ եղև մեզ. քանզի բազում մարտք պատերազմի մղեցան յերկրի մերում. 29 *Այլ շմաւոն որդի մատաթեայ քահանայապետի որդւոցն յովարիմ. եղբարբքն հանդերձ եդ զգլուխ իւր 'ի կշիռս. և եդ զանձն իւր 'ի ձգնութին մարտի պատերազմի. դիմակաց եղև թշնամեաց ազգին նց. զի սրբութիւնքն իւրեանց և օրէնքն մի պղծեսցին. և փառօք մեծօք փառաւորեաց զազգս նոցա ։ 30 *Եւ ժողովեաց յոնաթան զազգս նց. և եղև նց քահանայապետ. հանգեաւ նա՝ և ժողովեցաւ առ հարս իւր ։ 31 *Եւ կամեցան թշնամիք նոցա հասանել 'ի վր երկրի նոցա. և ձգել զձեռս իւրեանց 'ի սրբութիւնս նոցա ։ 32 *Յայնմ ժամանակի յարեաւ շմաւոն. և ետ մարտ պատերազմի 'ի վր ազգին իւրոյ. և ծախեաց նա զանձս բազումս յիւրմէ. և արար նա հանդերձ զինու զարդու արանցն պատերազմողաց ազգին իւրում. և կուտեաց նա համբարս և թոշակս զօրականին ։

33 *Եւ ամրացոյց զքաղաքսն հրէաստանի ։ զբեթսուրայ՝ որ 'ի սահմանս հրէաստանի էր. ուր հանդերձեալ դնէր զզէնս ամ. զէնս և զարդ առաջին զօրաց թշնամեաց նց. և կացոյց նա անդ արս հրէաստանեայս պահապանս ։ 34 *Եւ զքաղաքն յոպպէացւոց ամրացոյց. որ 'ի վր ծովուն էր ։ և զգազարայ՝ որ 'ի վր սահմանացն ազովտայն էր. զորյառաջ թշնամիքն ունէին. և բնակեցոյց անդ արս հրէաստանեայս. և որինչ մի անգամայէտք էին իւրեանց, հաստատութբ յօրինեաց զնս ։ 35 *Իբրև զայս ամ զգործս տեսին զշմաւոնի ժողովուրդքն. և զփառսն՝ զոր խորհէր նա 'ի վր ազգին. և կացուցին զնա իշխան քահանայապետ. զի զայս ամ արարեալ էր նր նց. և զարդարութին՝ և զհաւատն. զոր պահէր նա 'ի վր ազգին իւրոյ. և խնդրէր նա յամ հանգամանս բարձրացուցանել զժողովուրդն իւր ։ 36 *Եւ յաւուրս նր յաջողեցաւ 'ի ձեռս նր ջնջիլ հեթանոսացն յերկրէ նր. և այնոցիկ որք 'ի միջնաբերդն էին յեմ. ելանէին՝ մտանէին՝ և պղծէին յոյժ շուրջ զսրբութբն. և հարուածք մեծամեծք լինէին 'ի սրբութե անդ. արգել զնս՝ և ջնջեաց զնս ։ 37 *Նստոյց՝ և ամրացոյց անդ պահապանս վն զգուշութե երկրին և քաղաքին. և բարձրացոյց զնա ։ 38 *Մակայն և դեմետր արքայ բարձրացոյց զքահանայապետութին նր ։ 39 *Վասն այսր ամենայնի ընդբուն բարեկամս փառաւորեաց զնա 'ի փառս մեծութե ։ 40 *Զի լուեալ էր նմա. եթէ անուանեալ կոչին հրէայք բարեկամք հռոմայեցւոց. եղբարք՝ և թե կունք՝ և նիզակակիցք. և զի ընկալան զհրեշտակսն շմաւոնի փառաւորութբ ։ 41 *Զի հրէայքն ինքեանք և քահանայքն հաճեցան. յանձն առին իշխան քահանայապետ կացուցանել զնա յաւիտեանս ժամանակի. մինչև կանգնեսցի մարգարէ հաւատարիմ ։ 42 *Զի լիցի նց զօրավար առաջնորդութե. և զի փոյթ լիցի նմա վն սրբոցն. և կացուցանել 'ի նր ձեռանէ 'ի վր գործոց նոցա. 'ի վր գաւառաց նց. 'ի վր զինու զարդու նոցա. և 'ի վերայ ամրոցի նոցա ։ 43 *Մնզի փոյթ լիցի նմա վասն սրբոցն. և հնազանդեսցին նոցա ամ ազգք. և յանուն նորա կնքեսցին ամ մուրհակք աշխարհի. զի իշխան լիցի արկանել ծիրանիս. և զարդարիլ ոսկւով ։ 44 *Եւ մի ոք իշխեսցէ 'ի ժողովրդոց անտի կամ 'ի քահանայից ընդդէմ դառնալ հրամանաց նր. և կամ ժողովել ժողովս յերկրի նր առանց նորա. կամ զգենուլ ծիրանիս. կամ արկանել շիկ ոսկի ։ 45 *Զի եթէ ոք մի ինչ յայսցանէ անցցէ՝ և կամ անարգեսցէ՝ մահապարտ լիցի ։ 46 *Եւ հաճոյ թուեցաւ ժողովրդեանն առնել շմաւոնի ըստ բանիցս այսոցիկ ։

47 *Եառ յանձն շմաւոն. և հաճեցաւ կալ 'ի գլուխ քահանայապետութե. լինել սպարապետ զօրավար գնդին հրէաստանի. և կալ գլուխ քահանայից. և առաջնորդել ամենեցուն ։ 48 *Եւ զգիրս զայս գրել 'ի տախտակս պղնձիս. և հրամայեցին դնել յամբի 'ի նշանաւոր և յերևելի տեղւոջ 'ի մէջ սրբութեցն ։ 49 *Եւ զպատճէնս նոցա դնել 'ի գանձի. զի շմաւոն և որդիք նորա զայն առ իւրեանս ունիցին հանապազ ։

## ԳԼ. ԺԵ.

1 Եւ առաքեաց անտիոքոս որդի դեմետրեայ արքայի հրովարտակս 'ի կղզեաց անտի առ շմաւոն քահանայապետ՝ և կուսակալ ազգին հրէից 2 և առ ամենայն ազգս նց ։ *Եւ ունէին հրովարտակքն զօրինակ զայս. արքայ անտիոքոս. առ շմաւոն մեծ քահանայապետ առ կուսակալ ազգին հրէից՝ ողջոյն ։ 3 *Քանզի ոմանք անօրէնք եկին՝ և բռնութեամբ եղեն արքայութե հարցն իմոց. և արդ ես աւասիկ 'ի խն-

'ի խնդիր եմ անդրէն շինել՝ կանգնել՝
հաստատել զնոյն արքայութիւն . ո՛ր
էր զառաջինն . արդ՝ ես զօրաժողով
եմ զօրօք բազմօք՝ պատրաստեալ նաւս
պատերազմի : * Ելանել՝ և խնդրել 4
զվրէժ հարց իմոց յազգաց վնասակա
րաց երկրին մերոյ . և որք աւերեցին
զքաղաքսն մեր զմեծամեծս : * Արդ 5
հաստատեալեմ քեզ զամ ուխտ հար
ցին . զոր թողին ձեզ թագաւորքն
առաջինք . և որ ինչ այլ ինչ հաս օրէն
հարկի իցէ , թողեալ լիցի քեզ : * Եւ 6
հրամանս ետ տուաք , զի իշխան լիցիս
հատանել առանձինն դահեկան յաշ
խարհի քում : * Եւ Երուսաղէմ և սր 7
բութիւնքդ ազատք լիցին յամենայնէ .
և զէնդ և զարդդ՝ զոր գործեցեր , և
զամուրսդ՝ զորս ամրացուցեր՝ քեզ լի-
ցին այդոքիկ : * Եւ ամ պարտք ար- 8
քունի , հարք , և օրէնք՝ որք այտի
դային՝ քեզ լիցին յայսմհետէ մին-
չև յաւիտեանս ժամանակաց : * Այլ 9
իբրև հասցուք 'ի տէրութիւն մեր . փա-
ռաւորեսցուք զքեզ՝ և զազգ քո . և
զտաճարդ՝ 'ի փառս մեծութեան . զի յայտ
նի լիցին փառքն ձեր ընդ ամ երկիր :
* Յամին հարիւրորդի եօթանասներոր 10
դի չորրորդի եկն՝ էհաս անտիոքոս յեր
կիրն հարց իւրոց . ժողովեցան առ նա
ամ զօրք . և սակաւք ինչ մնացին առ
տրիփոնայ : * Եւ հալածեաց զնա ան 11
տիոքոս . և եած՝ եհարկ զնա 'ի դօրայ ծո
վեզերեայց : * Եւ թողին զնա ամե- 12
նայն զօրքն . և իբրև տեսին զչա-
րիսն . որք անցին ընդ նա : * Անտիո- 13
քոս եկն՝ և բանակեցաւ շուրջ զդօ-
րաւ երկոտասան հազարաւ՝ մարտիկ
պատերազմօղ արամբ . և ութնհա-
զար հեծեալ սպառազինաւ : * Եւ 14
զծովակողմն փակեաց նաւօք . և 'ի նեղ
էարկ զքաղաքն 'ի ծովէ և 'ի ցամաք
կուսէ . և ոչ զոք թողուին ելանել :
* Եւ եկն նումենիոս . և որք ընդ նմա 15
էին . բերին հրովարտակս 'ի հռովմքա
ղաքէ առ թագաւորս երկրին . յորս
գրեալէր այսպէս : * Ղուկիոս հիւ- 16
պատոս հռոմայեցւոց՝ առ արքայ պտո
ղոմէոս ողջոյն : * Ծերքդ 'ի հրէաս- 17
տանէ եկին առ մեզ նորոգել զառա
ջին սէր բարեկամութե՝ նիզակա-
կիցս և թիկունս մեզ . զորս արձա-
կեալ առ մեզ շմաւօնի քահանայա-
պետի՝ և դնդին հրէից : * Բերին մեզ 18
վահան ոսկի 'ի հինգ հազար քանքա-
րէ : * Վասն այսորիկ հաճոյ թուե- 19
ցաւ մեզ՝ գրել առ թագաւորս երկ-
րիդ՝ և ամենայն ազգացդ . զի մի՛ոք
ինչ չար խորհիցի 'ի վերայ նոցա . և

մի տայցեն մարտ պատերազմի ընդ քա
ղաքս դոցա՝ և ընդ երկիր . զի մի դո-
քա ընկեր լիցին մարտի թշնամեաց :
20 * Հաճոյ թուեցաւ մեզ առնուլ զվա
21 հանն 'ի դոցանէ : * Արդ եթէ իցեն
արք անօրէնք փախուցեալք յերկրէ
դոցա՝ 'ի ձեռս տաջիք շմաւօնի քահա
նայապետի . զի խնդրել մարթասցի
22 զվրէժ ըստ օրինացն իւրեանց . * Եւ
այսպէս գրէր առ դեմետր արքայ . և
առ աթաղյայ . և առ արիարեթ . և առ
23 արշակ : * Յամ գաւառս . ուր ինչ բար
ւոք թուիցի սպարտիացւոց . և 'ի դե-
ղոս . և 'ի մինդօնայ . և 'ի սիկոնայ . և 'ի
կարադայ . և 'ի սամօն . և 'ի պամփիւ
լայ . և 'ի փասեղիդայ . և 'ի սիդեն . և 'ի
սարադօն . և 'ի պորտունիայ . և 'ի կնի
24 դոս . և 'ի կիպրոս . և 'ի կիւրէն : * Եւ
պատճէն հրովարտակացն գրեցին առ
25 շմաւօն քահանայապետ : * Եւ անտի
ոքոս արքայ եկն պաշարեաց զդօրայ .
և 'ի վաղիւ անդր մատուցանէր առ
նա մեքենայս , և ձեռնարկէր 'ի նա . և
'ի ներքս արգելեալ պարշարեալ պա-
հէր զտրիփոն : և ոչ ել ումեք դուր 'ի
ներքուստ արտաքս՝ և ոչ մուտ արտա-
26 քուստ 'ի ներքս : * Եւ յղեաց շմաւօն
'ի թիկունս նմա արս ընտիրս մարտիկս
պատերազմօղս , երկուս հազարս սպա
ռազէնս . և 'ի պատարագս հանդեր-
27 ձեալս յոյժ ոսկի և արծաթ : * Այլ
անարգեաց զամ բանսն . զոր ուխտեաց
28 նմա . և օտարանայր 'ի նմանէ : * Եւ
առաքեաց նա զաթենոբիոս՝ զմի 'ի բա
րեկամացն իւրոց . խօսս 'ի մէջ առնել
ընդ նմա՝ և ասել . դուք իշխեալ զօրա
ցեալ ունիք զքաղաքս թագաւորու-
թե իմոյ . զքաղաքն յոպպէացւոց . և
գազարացւոց . և զմիջնաբերդն եէմի :
29 * Զսահմանս նոցա աւերեցիք դուք .
և հարուածս մեծամեծս հասուցիք
'ի վր երկրին նց . տիրեցիք դուք կող
մանց բազմաց՝ և գաւառս բազում
30 հատիք իմոյ տէրութե : * Արդ տուք
'ի դուրս զքաղաքս՝ և զգաւառս՝ և
զհարկս նոցուն . և որ ինչ միանգամ
բռնութբ կալեալէ ձեր 'ի մէնջ . ար-
տաքոյ սահմանացն հրէաստանի :
31 * Ապա եթէ ոչ , տուք փոխանակ այնո
ցիկ հինգ հարիւր քանքար արծաթոյ .
և զխափանած հարկաց քաղաքացն ,
զորս ցայսօր խափանեցիք՝ այլևս հինգ 500
հազար քանքար : ապա եթէ ոչ՝ եկես
ցուք՝ հարցուք՝ վանեսցուք զերկիրն՝
32 և սատակեսցուք : * Եւ իբրև եկն
աթենոբիոս բարեկամ արքայի յեէմ .
ետես զփառս շմաւօնի . և զսպաս զոսկ
ւոյ . և զարծաթոյ . և զհանդերձս

'է 1000

պատրաստութի՛ զօրաց բազմաց․ յոտն
կայր առաջի նո՛․ և շքով տայր զպատ
գամս Թագաւորին ։ 33 *Պատասխանի
ետ նմա Շմաւոն՝ և ասէ ․ ոչ յերկիր
օտար ուրուք մտեալ եմք ․ և ոչ 'ի բա
ժինս ուրուք տարապարտուց ձեռն բռ
նութե՛ մխեալ եմք ․ զմի ձակ ժառան
գութե հարցն մերոց վտարանդի լեալ
յանպարտ Թշնամեաց տարապար
տուց ։ 34 *Բայցութե՛ ժամանակ գտեալ
խնդրեցաք ։ 35 *Արդ վա՛ յոպպէացւոց քա
ղաքին ․ և գազարայ՝ զոր դուքն խն
դրէք․ նոքա բազում գործեցին 'ի մէջ
աշխարհին մերում, վրէժ խնդրեցաք ․
վասն այսորիկ տուժիցուք հարիւր
քանքար ։ և ոչ ետ նմա բանիցն պա
տասխանի ։ 36 *Եւ դարձաւ բարկութ՛
առ Թագաւորն ․ և պատմեաց նմա
զփառսն Շմաւոնի ․ և զնմ պատրաս
տութի՛ զոր ետես սպասուց նորա ․ և
բարկացոյց յոյժ զԹագաւորն ։ 37 *Եւ
տրիփոն փախեաւ յորթոսիայ ։ 38 *Եւ
Թագաւորն գումարեաց զկենդեբեոս
ծովեզերեայց սպարապետն ․ և զօրս
բազումս հեծեալս և հետևակս ընդ
նմա ։ 39 *Պատուէր ետ նմա ․ զի բանա
կեսցի դէմ յանդիման հրէաստանի ․
և շինեսցեն զամուրսն 'ի պատրաս
տութիւն մարտի պատերազմի ընդ
զօրսն իէլացւոց ․ և ինքն Թագաւորն
զհետ էր տրիփոնայ ։ 40 *Խաղաց՝ գնաց
կենդեբեոս ․ եկն՝ եհաս 'ի կողմանս յա
մնեայ ․ և սկսաւ գրգռել զզօրսն ․ և
մխել 'ի հրէաստան ․ գերել՝ և սպանա
նել ․ և շինեաց նա զկեդրոն ։ 41 *Եւ
գումարեաց անդ հեծելազօրս բա
զումս ․ զի մխեսցին 'ի հրէաստան ․ և
պաշարեսցեն զճանապարհս նոցա ․
որպէս հրաման ետ Թագաւորն ։

## ԳԼ ։ ԺԶ ։

1 Ելեալ յօհան 'ի գազարայ ․ և եկն՝
պատմեաց Շմաւոնի հօր իւրում ․
որպէս և գնայր կենդեբեոս ։ 2 *Եւ կոչ
եաց Շմաւոն զերկոսին որդիսն զյու
դայ ․ և զյօհան ․ և ասէ ցնո՛՝ ես և եղ
բարք իմ՝ և տուն հօր իմոյ մարտ պա
տերազմի տուաք ընդ Թշնամիսն իէլա
ցւոց 'ի մանկութէ մերմէ մինչև յայսօր
ժամանակի ․ և յաջողեցան գործքն
մեր՝ 'ի ձեռս մեր փրկել զբազում՝ [margin: բազմեցա՝]
զազգս իէլացւոց ։ 3 *Բայց արդ ծերա
ցայ ․ և դուք հերիք էք յամս իմ ․ փո
խանակ իմ և եղբօր իմոյ ․ արդ ելէք
մարտերուք 'ի վերայ ազգիդ մերոյ ․
և զօրութի օգնութեց յերկնից եղիցի
ընդ ձեզ ։ 4 *Եւ ընտրեաց նա յաշխար
հէ անտի իբրև քսան հազար հեծեալ

սպառազէն ․ և խաղաց 'ի վր՛ կենդե
բոսեայ ։ 5 *Եւ եկին՝ ագան այն օր 'ի
մովդիիմ ․ ընդ առաւօտն կանխեալ
լինէին դաշտամուխ ․ անդ տեսանէին
զօրս բազումս հեծեալս և հետևակս ․
որք գային ընդդէմ նո՛ ․ և հեղեղատ
6 մի էր 'ի մէջ երկոցունցն ։ *Եւ ճակա
տեցաւ յանդիման նո՛ ինքն և զօրքն ․
իբրև հայեցաւ՝ և ետես զզօրսն՝ եթէ
դանդաղեցան անցանել ընդ հե
ղեղատն ․ յառաջ ինքն նահատակե
ցաւ , հապա զօրքն միագունդ զկնի
7 փոխեցան ։ *Եւ բաժանեաց յերկուս
գունդս զհեծելազօրսն 'ի մէջ հետևա
կացն ․ և էր հեծելազօրն կարի յոյժ ։
8 *Փող հարին՝ խրախոյս բարձին, 'ի վր՛
յարձակեցան ․ 'ի պարտութի՛ մատ
նեցաւ կենդեբոս՝ և անկան 'ի նոցա
նէ յաւուր յայնմիկ վիրաւորք բա
զումք ․ և որք մնացեալ էին՝ փախս
9 տեայ անկանէին յամուրսն ։ *Յայնմիկ
խոց մնայր և յուդայ ․ բայց յօհան զհետ
լինէր փախստեայցն ․ մինչ ածէր՝ ար
կանէր զնո՛ 'ի կողմանս կեդրոնայ ․ զոր
10 շինեաց ։ *Եւ մեկնեցան նոքա ընդ
բրգունսն 'ի կողմանսն ազովտայ ․ և
հրձիգ արար զնո՛ ․ յայնմ այրեցան 'ի
հրոյ իբրև արք երկու հազարք ․ և
ինքն դարձաւ 'ի կողմանս հրէաստա
11 նի խաղաղութե՛ ։ *Եւ պտողոմէոս
աբուբբեանց էր կացուցեալ կող
մանցն դաշտին երիքովի ․ և ունէր նա
12 արծաթ և ոսկի յոյժ ։ *Օի էր նա
13 փեսայ քահանայապետին ։ *Եւ հպար
տացաւ 'ի սիրտ իւր ․ մեծամտեցաւ 'ի
խորհուրդս իւր ․ և կամէր տիրել 'ի
վերայ կողմանցն գաւառին ․ և խոր
հուրդ խորհէր նենգութե՛ 'ի վերայ Շմա
ւոնի և որդւոցն նորա , ջնջել զնոսա
14 'ի միջոյ ։ *Եւ Շմաւոն շրջէր 'ի կող
մանս գաւառացն ․ խնամէր՝ և տեսա
նէր զպէտս նոցա ․ և եկն՝ էջ յերիքով
ինքն և մատաթի ․ և յուդայ՝ որդիք
նորա ․ յամին հարիւրորդի եօթա
նասներորդի եօթներորդի ․ յամ
սեանն մետասաներորդի ․ այս է ամիս
15 շաբաթու ։ *Եւ ընկալաւ զնոսա պտո
ղոմէոս 'ի մեծարանս նենգութե՛ 'ի
քաղաքի անդ դօքայ՝ զոր շինեաց ․ և
արար ուրախութի կոչնոցն ․ անդ 'ի
16 դարանի առնէր արս ։ *Եւ իբրև կե
րին՝ և արբին ․ Շմաւոն և որդիքն իւր
արբեցան ․ յարեաւ պտողոմէոս Թա
քուցելօքն հանդերձ ․ առին զզէնս
իւրեանց ․ և մտին 'ի վերայ Շմաւոնի ․
և սպանին անդէն 'ի տաճարի անդ
զնա՝ և զորդիս իւր՝ և զծառայսն ․ որք
17 ընդ նմա էին ։ *Եւ արարին անօրէ
նու

նութի մեծ. և հատուցին չար փոխա
նակ բարւոյ: 18 * Եւ գրեաց պտղո-
մէոս առ արքայն. զի զօր 'ի թիկունս
արձակեսցէ նմա. զի 'ի ձեռս տացէ
նոցա զքաղաքսն իւրեանց՝ և զհարկս:
19 * Զկէսն արձակեաց 'ի կողմն գազա
րայ. բառնալ անտի զյովհաննէս. և
գրեաց նա առ զօրագլուխսն. զի եկես
ցեն՝ և առցեն 'ի նմանէ ոսկի և ար-
ծաթ. և պարգևս բազումս: 20 * Եւ
այլս արձակեաց յերէմ. զի աճապա-
րեսցեն՝ հասցեն՝ առցեն զլեառն տա
ճարին: 21 * Այր մի պնտեցաւ յառաջա
գոյն 'ի գազարայ. գոյժ ետ յովհանն-
նու՝ թէ կորեաւ հայր նր և եղբարք
իւր. և զքեն ևս յղեալ է նենգութբ՝
22 զի սպանցեն զքեզ: * Իբրև լուաւ՝
զարմացաւ յոյժ՝ և յիմարեցաւ. և ըմ
բռնեաց զարսն զայնս. և անդէն սպան
զնոսա. իբրև գիտաց եթէ նենգու-
23 թբ եկեալ են կորուսանել զնա: * Եւ
այլ ինչ բանք՝ որք իցեն զյովհաննէ
վասն մարտի պատերազմաց. կամ
այլոց քաջութեց. կամ շինուածոց
պարսպաց. կամ գործոցն բարութե:
24 * Ահա ամենայն գրեալ է 'ի մատեանս
քահանայից. յորմէհետէ եկաց նա
քահանայապետ զկնի հօր իւրոյ:

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

## ՄԱԿԱԲԱՅԵՑՒՈՑ.

### Գլուխ Առաջներորդ:

Առ եղ-
բարս հրէ-
այսորս 'ի

1 ԱՌ ԵՂ-
ԲԱՐՍ ՀՐԷ-
աստանեայս.
որք 'ի կողմանս
եգիպտացւոց
են. յեղբարց
հրէից ողջոյն.
խաղաղութի բազ-
մաւ: 2 * Առատասցի 'ի ձեզ Ած. և
յիշեսցէ նա զուխտն. զոր եդ ը աբ-
րահամու. ընդ իսահակայ. և ընդ յա
կոբայ. ընդ հաւատարիմ ծառայս
իւր: 3 * Եւ տացէ ձեզ զսիրտ յամի պաշ
տել զնա. և առնել զկամս նորա յան
ձինս մտադիւրս. և 'ի սիրտս կամա-
կարս: 4 * Բանալ զաչս և զականջս սր
տից ձերոց յօրէնս իւր և 'ի հրամանս
իւր: առնել խաղաղութի: 5 * Եւ լսել
խնդրուածոց ձերոց. հաճեսցի ընդ
ձեզ. և մի 'ի ձեռաց թողցէ զձեզ 'ի
ժամանակս նեղութե: 6 * Եւ արդ՝ այժ
միկ կանխեմք մեք յաղօթս մեր վասն
ձեր: յամն թագաւորութե դեմետրիւ
7 * Յամին հարիւրորդի վաթսներոր-
դի իններորդի. մեք հրէայք գրեցաք
զայս առ ձեզ 'ի նեղութեն, որ հասեալ
էր 'ի վր մեր 'ի ժամանակի անդ՝ յոր
ում եկաց յետս յասօն. և որք ը նմա
էին 'ի սուրբ գետնոյ և յարքայութե-
8 անտի: * Եւ հրձիգ արարին զդուռնն.
և հեղին զարիւն անմեղ: աղօթս մա
տուցաք մեք Տն. և լուաւ մեզ. և
մատուցաք մեք ուխտս՝ և խունկս՝ և
պատարագս նաշհօք. և եդաք մեք
9 զհացն յաճախաց առաջի: * Եւ արդ՝
արասջիք դուք ‖ զաւուրսն տաղաւա
րահարաց. յամսեանն քասղև:

‖Ղևտ. 23. 24.

10 * Յամին հարիւրերորդի ութսներոր
դի ութերորդի: որ յեհմացւոց. և 'ի
ծերակոյտ հրէաստանեայց. և 'իյու-
դայէ՝ առ երիստաբուղոս վարդա-
պետ պտղոմեայ արքայի. որ է ինքն
յազգէ քահանայիցն օծելոց սակի.
որք են 'ի կողմանս եգիպտացւոց հրէ
այք. ողջոյն ընդ ձեզ և խաղաղութի:
11 * 'Ի մեծամեծ վշտաց ապրեալք յայ.
մեծապէս գոհանամք զնմանէ. որպ զի
զիարդ 'ի մարտ պատերազմի պատրաս
տեալ էաք ընդ առն թագաւորի. զի

նա ինքն եռացոյց. և եհեղ զայնոսիկ: 12 *Որք եկեալ՝ պատեալ՝ պաշարեալ պահէին զմեր քաղաքն: քանզի ՚ի ժամանակի իբրև դիմեաց ինքնին իշխանն ՚ի կողմանս պարսից: 13 *Անթիւ անհամար զօրօքն համդերձ. և անդէն անկան՝ կործանեցան շուրջ զանմնեայ տաճարաւն. ՚ի խորհուրդ յիմարութե խորհեցան նոքա. զնէեմեայ տաճարաւն: 14 *Զի իբր բնակութիւ իմն հարսնեալ կայր ՚ի տեղի անդր ինքնին անտիոքոս՝ և որք ընդ նմա բարեկամքն էին առնուլ զգանձսն ամ, իբրև ՚ի պատճառս վարձանաց համարի: 15 *Առաջի արարին քահանայք տաճարին զամ. և նա յօժարեցաւ գալ, մտանել սակաւուք ՚ի ներքս. իբրև եղև միջամուտ սրահիցն համարձակ. ընդ դրունսն առին զարտաքինս պարսպացն՝ ընդ որ եմուտ անտիոքոս: 16 *Եւ բացին զպատուհանս գաղտնիս. որք ընդ առաստաղակալօքն էին. և ընդ այն սկսան հոսել վէմս մեծամեծս. և անդէն զառաջնորդն գնդաւն հանդերձ սատակեցին: իբրև զնոսա ՚ի ներքս յօշեցին, հանին զկառափունսն՝ և ընկեցին ՚ի պարսպէն ՚ի մէջ զօրացն: 17 *Սան այսր ամի օրհնեալ է Ած. որ ետ ՚ի ձեռս զամպարիշտս: 18 *Արդ մեք իբրև կամեցաք ՚ի քսաներորդի ՚ի հինգերորդի քասղև ամսեանն սրբել զտաճարն. լաւ համարեցաք զայս և ձեզ ցուցանել. զի և դուք արասջիք իբրև զօրէնս տօնիցն՝ և տաղաւարահարացն՝ և հրոյն: ո՞ր շինեաց նէեմի զտաճարն և զսեղանն. յորում մատուցանէր զպատարագսն ողջակիզացն: 19 *Քանզի ՚ի ժամանակին՝ յորում վարեցան հարքն մեր ՚ի կողմանս պարսից: որք այնց ժամանակաց պաշտօնասէր քահանայքն էին. առին ՚ի սեղանոյ անտի զհուրն ՚ի ծածուկ. և տարան՝ թաքուցին ՚ի խորս կողմանցն անջուր ջրհորոյն. անդ զգուշութ զտեղին հաստախալաղ ծածկէին. զի ամ տեղին աներևոյթ լիցի: 20 *Իբրև անցին ամք բազումք. և իբրև կամք եղեն Այ. առաքեաց նէեմի հրոյն՝ հրամանաւ պարսից արքայի, զթոռունս քահանայապետիցն այնոցիկ. որոց ծածկեալ թաքուցեալ էր զհուրն՝ զի բերցեն: նոքա իբրև եկին, պատմեցին՝ և ասեն. բայ՝ հուր ինչ մեք անդ ոչ գտաք. բայց գտաք մեք ջուր անդ դանդաղամած՝ թանձրացեալ: 21 *Ապա ետ նոցա հրաման երթալ մնոց առնել՝ և բերել. և իբրև եղև ժամ պատարագացն ողջակիզաց, հրաման ետ քահանայապետն նէեմի ցանել զայն ՚ի վր փայտիցն և պատարագացն: 22 *Եւ իբրև զայս արարին. փոքր մի ժամանակ էանց ՚ի վերայ. և արեգակն պչող ամպադոյն ՚ի վերայ ծագեաց. բորբոքեցաւ բոց հրոյն ՚ի վերայ փայտից սեղանոյն. և մաշեաց զողջակէզսն. զի սքանչացեալ էին ամենեքեան: 23 *Զայն առին՝ սկսան օրհնել քահանայքն մինչդեռ ողջակէզքն կատարէին. բայց առաջնորդէր յոնաթան իբրև ՚ի բերանոյ նէեմեայ. և այլքն զկնի կցէին: 24 *Եւ էր աղօթիցն օրինակ այս: Տր՝ Տր Ած ամ արարածոց. ահեղ. հզօր. ճշմարիտ. արդար՝ և ողորմած. դու միայն թագաւոր քաղցր: 25 *Դու միայն ես. որ մատակարարես ամ զամ. դու միայն ես արդար՝ և ճշմարիտ ամենակալ յաւիտենից. որ ապրեցուցանես զիէլ յամ չարեաց. որ արարեր զհարս այնպէս ընտրեալ. և սրբեցեր զնս: 26 *Ընկալ զպատարագս զայս փոխանակ ամ ժողովրդեան քոյ՝ և պահեա դու զժառանգութի քո: 27 *Սրբեա և ժողովեա զցրուեալ գերութե մերոյ. ազատեա զայնոսիկ. որք կան ՚ի ծառայութե անարգելոց և պղծոց. հայեաց ՚ի ծառայս քո. ծանիցեն հեթանոսք՝ եթէ դու ես Ած մեր: 28 *Տա՛ր հարուածովք քովք զայնոսիկ. որք բռնադատեցին զմեզ՝ հեթանոսք պիղծք և անարգեալք. որք այժմ հպարտացեալք և ամբարտաւանեալք են ՚ի վր մեր: 29 *Եւ տնկեա դու զժողովուրդ քո ՚ի տեղիս սրբութե քոյ: 30 *Եւ քահանայքն օրհնէին զօրհնութիւս իւրեանց: 31 *Եւ ողջակէզքն տակաւ վառեալք՝ բորբոքեալք մաշէին. և իբրև վախճան եղև պատարագացն, զջուրն մնացեալ հրամայեաց նէեմի զվիմօքն արկանել: 32 *Եւ իբրև այս եղև. առաւել բոցն ՚ի վեր բորբոքեցաւ. և իբրև բոցոյն նշոյլք եղեն. դարձեալ միւսանգամ վառեցաւ՝ բորբոքեցաւ սեղանն. և որինչ էր մնացեալ՝ և այն մաշեցաւ: 33 *Եւ իբրև իրքն այն համարձակ յայտնեցան. և բանք ՚ի թագաւոր անդր հասին. և եկին՝ տեսին զտեղին յորում զհուրն թաքուցեալ էր քահանայիցն գերելոց, ջուր բղխեցաւ. ուստի և քահանայքն՝ որք զնէեմաւն էին՝ զողջակէզսն իւրեանց կատարեալ սրբեցին: 34 *Ապա իբրև էհաս թագաւորն իրացն հաստատութե ՚ի վերայ, հրամայեաց շուրջ փակել զտեղին. և տաճար շինեցին: 35 *Եւ ուր կամէր շնորհս առնել թագաւորն.

ւորն, անուն տայր պարգեւս. եւ ում տայր բազում ինչս, մատուցանէին նմա։ 36 *Եւ անուն եդին նմա՝ որք ընդ նէեմեան էին՝ նեփթէ. որ թարգմանեալ կոչի սրբիչ։ այլ կարդային զանուն նորա բազումք, եփրաթայ։

## ԳԼ. Բ.

1 Եւ գտանի այս գրեալ՝ի մատեանս առաջինս. եթէ երեմիա մարգարէ հրամանն ետ առնուլ՝ի հրոյ անտի յայնմանէ յետնոց ն՟շ. ո՟պ ցուցանէ. եւ ետ պատուէր մարգարէն զաւակի ն՟շ. որք յետնոցայն էին։ 2 *Եւ օրէնս ետ նոցա. զի մի մոռասցին զհրամանս Տ՟ն. եւ մի մոլորեսցին՝ի խորհուրդս իւրեանց. յորժամ տեսանիցեն կուռս քանդակեալս. պատկերս կերպարանեալս՝ ոսկեղէնս եւ արծաթեղէնս. եւ որ զնոքօք զարդ ինչ իցէ։ 3 *Աղաչէր պատուիրանաւն. մի մոռանալ զօրէնս՝ի սրտից իւրց։ 4 *Եւ էր գրեալ՝ի մատեանս անդ այսպէս. իբրեւ զվրան ժամուն. եւ զտապանակ կտակարանացն հրամայեաց մարգարէն՝ ըստ երկնաւոր հրամանին՝ ընդ իւրեանս շրջեցուցանել. իբրեւ ելանէր մովսէս՝ի լեառն անդր տեսանել զժառանգութիւնն Ա՟յ։ 5 *Արդ եկն՝ եհաս երեմիա մարգարէ՝ի տեղի անդր. եւ անդ եգիտ այր ամուրս անտառախիտ։ զվրան ժամուն՝ եւ զտապանակն կտակարանացն՝ եւ զսեղանն խնկոց անդր տարեալ դնէր՝ի ներքս. եւ զդրունսն ինքնին առարկանէր։ 6 *Եւ անդէն մատեան. որք ընդ նմայն իսկ էին՝ նշանակել զտեղին. եւ ամենեւին ճանապարհի տեղի անդր ոչ կարացին գտանել։ 7 *Իբրեւ զգաց երեմիա՝ պատուհասել սկսաւ զնոսա՝ եւ ասէ. իբրեւ ոչ գիտէիք՝ եթէ յանծանօթ հրամանէ զտեղիդ կացուցանել՝ մինչեւ հաճեսցի Տ՟րն տերանց ընդ արարածս իւր. եւ ժողովել հրամայեսցէ Ա՟ծ զժողովս ժողովրդեանն իւրոյ։ 8 *Եւ ապա Տ՟ր յայտնեսցէ զայս. եւ երեւեսցին փառքն Տ՟ն՝ի սիւն ամպոյն՝ որպէս եւ՝ի ժամանակին մովսէսի. ո՟պ եւ սաղոմոն աղաչեաց. զի տեղին սրբեսցի Տ՟ն։ 9 *Յայտ իմն այսպէս առնէր. եթէ իմաստութե խորհրդով մատուցին զպատարագ նաւակատեացն. եւ զկատարելեաց տաճարին։ 10 *Որպէս եւ մովսէսին եկաց յաղօթս առ Տէր. եւ էջ հուրն յերկնից եւ մաշեաց զփայտսն. եւ զողջակէզս պատարագացն. սոյնպէս եւ սաղոմոն եկաց յաղօթս. էջ հուրն՝ եւ մաշեաց զողջակէզսն՝ի վ՟ր սեղանոյն։

Երեմ. 29. 7.
Բ. Օրէ. 34. 1.
Գ. Թագ. 8. 11. եւ 62.
Բ. Մն. 6. 14.
Ղեւ. 9. 24.
Բ. Մն. 7. 1.

11 *Զի մովսէսի չէր հրամայեալ ուտելի առնել զվասն մեղացն. իջանէր հուրն՝ եւ մաշէր զպատարագսն։ 12 *Սոյնպէս եւ սաղոմոն առնէր զայն զութ օրն՝ի գլուխ։ 13 *Եւ խնդրէին՝ի հին մատեանս՝ի գիրս հարցափորձից. որ առ ամօքն նեեմեայ եղեալ. եւ իբրեւ զիւր եդեալ զայս ա՟մ ժողովէր. եւ զայլ մատեանս թագաւորաց, եւ մարգարէից. եւ դաւթի ինքնին գլխովն. եւ զայլ հրովարտակս՝ի թագաւորաց՝ որ վ՟ս ինչ ինչ՝ի պատիւ թագաւորաց՝ի տաճարին եդեալ էր. զա՟մ՝ի մի վայր կուտէր։ 14 *Սոյնպէս եւ յուդա զա՟մ կործանեալն՝ի պատերազմաց անտի, եւ զցրուեալսն՝ի մի վայր ժողովեաց. եւ այժմ բովանդակեալ պահի։ 15 *Եւ արդ՝ որպէս զիարդ եւ պիտոյ իցէ ձեզ՝ յղեսջիք. եւ մեք տացուք բերել ձեզ։ 16 *Եւ զայն ինչ բարի գործեսջիք. եթէ զաւուրս տօնիցն հանապազորդ առնիջիք։ 17 *Այլ Ա՟ծ. որ փրկեաց զա՟մ ժողովուրդ իւր. եւ դարձոյց զա՟մ՝ի ժառանգութի զարքայութի. եւ զքահանայութի եւ զսրբութի։ 18 *Որ՟պ խոստացաւ՝ի ձեռն կտակարանացն. յուսամք՝ի Տ՟ր՝ եթէ հուպ ընդ հուպ ժողովեսցէ՝ի մ՟ի տեղին։ 19 *Զի փրկեաց իսկ զմեզ՝ի մեծամեծաց չարեաց. եւ զտեղին՝ի սրբութի դարձոյց։ 20 *Այլ վասն յուդայ մակաբեանց՝ եւ եղբարցն սորին. եւ տաճարին մեծի սրբութե. եւ սեղանոյն նաւակատեաց. 21 *Եւ վ՟ս ընդ երեւիլ անտիոքայ. կամ ընդ քաջահայր որդի նորա ճակատամարտս։ 22 *Կամ որինչ յերկնից յայտնութիք եղեն. այն որինչ վ՟ս քաջութե պնդութե օրինացն. եւ կամ որ զքաջութի՝ի մոռ դնել. եւ սակաւուք զբազումս, որք զաշխարհս յաւս դնէին 23 զխուժ դուժ ազգս հալածել։ *Կամ զհռչակաւոր ընդ ա՟մ տիեզերս զշքեղ տաճարն վերստին շինել. կամ զմեծ քաղաքն ա՟մ՟ն յա՟մէ յազատութի հանել. կամ զի ա՟մ քաղցրութե հեզութե. խաղաղութե Տ՟ն Ա՟ծ ընդ մեզ 24 հաճելինի։ *Զայն ա՟մ որինչ միանգամ՝ի ձեռն յասոնայ կիւրենացւոյ.՝ի հինգ գլուխ դպրութե ցուցեալ է. զայս ա՟մ ջանասցուք՝ի մի գլուխ հրովարտակս կարճ՝ի կարճոյ ցուցանել։ 25 *Զի հայեցաք մեք՝ի խուռն մեծաթիւ համարոյ բանից. եւ որ՝ի ներքս ծանրութի թուիցի. որ կամի 26 մխիլ՝ի բանս մատենիցդ։ *Այժմ ընդ դոյն թաթաւեալ վ՟ս թանձրութե հիւթոյ՝ խորութե բանիցդ՝ հոգացաք մեք առնել ընթերցանելեացն

զբօ_

Ղեւ. 10. 16. եւ 17.
Բ. Օրէ. 30. 3. 5.
երեւելւ
կարճոյ

զբօսանս՝ իմաստնոց յիշատակ առանց աշխատութեան, և ամենեցուն անեղծ անարատութեան ։ 27 *Եւ մեզ՝ որ զաշխատութիւս զայս յանձն առաք վ֊ն համառօտ բանիս․ ոչ դիւրին ինչ ջան համարիցիք․ կամ սակաւ քրտանց և տքնութեանց ։ 28 *Որպէս զի պատրաստիցի առնել ուրախութիւն կոչնոց ընկերաց․ մեծաշահ գործիցէ, զընկերացն ուրախութիւն, և ոչ զիւր դիւրութիւն խորհիցի․ սակայն վասն բազմաց հաճութեան ջան յանձն առաք ։ 29 *Զճշդելն, և զճշմարտելն զայն առաջնոյն թողաք․ զեղչելն և զբազկելն․ և զկարճառօտ բանն ՚ի համառօտ կացուցանել, զայն մեք ոչ դանդաղեցաք ։ 30 *Որպէս վ֊ն հասարակաց շինութեան ապարանից՝ բազմաց զգործ բաժանել․ բայց սկիզբն և կատարածն շինուածոյն ՚ի բուն ճարտարապետ անդր հայի․ այլ ծեփելն՝ գունելն՝ և արծնելն՝ և նկարելն՝ այն ՚ի զարդարիչն անդր հայի ։ 31 *Այնպէս և մերս հարցանելն՝ և փորձելն՝ և քննելն՝ և զհետ վարել ճշմարտութեան բանիցն․ և զխորին խորհուրդս խորագիտութեան ՚ի վեր բերել․ որ առաջնորդ եղև այնց դպրութեց, ՚ի նմանէ խնդրելի է ։ 32 *Այլ զհամառօտ՝ և զկարճառօտ բանից՝ որ այժմիկ պատմելոյ յանձն առեալս իցէ, յինէն պահանջելի է ։ 33 *Արդ աստի սկիզբն արասցուք բանիցդ պատմել խօսացելոց․ այսչափ ինչ զօդեսցուք յառաջինն անդր․ բայց սակայն և այս անգորոյն մնաց է՝ զճառս մատենին յառաջադոյն երկայնել՝ և զմատեանն ՚ի գլխովին համառօտ, և կարճառօտ պատմել ։

## ԳԼ ։ Գ ։

1 Սրբոյ քաղաքին ամ խաղաղութեամբ բնակեցելոյ՝ և օրինացն ճշմարտութեան իբրև զի գեղեցիկ իմն պահեցելոց․ վ֊ն Ոնեայ քահանայապետի ՚ի բարեպաշտ չարեաց սրբութե ։ 2 *Եւ իբրև հարկ իմն լինէր․ և թագաւորացն ինքնին մեծարել զերևելի տաճարն հռովարտակօք․ պատարագօք՝ և դրովք բազմօք ։ 3 *Մինչև սելևկիոս արքայ կողմանցն ասիացւոց ՚ի սպաս պաշտաման՝ և յիւրոց մտից զամ սպաս պաշտաման ՚ի պատարագս ողջակիզացն ծախէր ։ 4 *Սիմոն ոմն անուն ՚ի բաղգեղ գնդէ անուն առաջնորդէր տոհմին իւրոյ՝ ընդ հակառակս ել քահանայապետին՝ վասն իւր ՚ի քաղաք անդր անօրինելոյ ։ 5 *Իբրև յաղթել ինչ և առնել ոնեայ ոչ կարաց․ եկն՝ եկաց առաջի ապողոնեայն դրասեանցն ամ այնմ ժամանակի տորին ասորւոց՝ որ և տաճկաստանի սպարապետ էր ։ 6 *Եւ պատմեաց նմա եթէ բազումք են գանձք՝ որովք լցեալք պահեն ըզ տունն գանձիցն՝ յեղմ․ և ազգի ազգի գանձիցն զթիւ իսկ և զհամար ոչ մարթի ոք ունել․ և պարտ այնմ էր՝ ասէ․ ընդ բռամբ արքայի ՚ի սպաս զոհիցն պաշտել զայն ։ 7 *Զանձնէառ ապողոնիոս և թագաւորին․ ամ նմա պատմեաց վասն գանձիցն ցուցանել․ նա յառաջ կոչեաց զհելիոդորոս զհան դերձապետն իւր․ հրաման ետ նմա զայսչափ գանձ հանել ՚ի քաղաքէ անտի ։ 8 *Վաղվաղակի չու առնէր՝ խաղայր՝ գնայր հելիոդորոս․ պատճառանօք իբրև տորին ասորւոց՝ և տաճկաստանի քաղաքացն զաշակերտութ շրջել․ բայց ՚ի սրտէ զհրաման թագաւորին վաղվաղակի կատարէր ։ 9 *Իբրև եկն՝ էհաս յեղմ, անդ սիրով քահանայապետն և քաղաքն ամ ընկալան զնա ամ առատութբ․ սկսաւ նա պատմել նց․ ամ ցուցին արքայի ։ և ասէ․ ո՞ կամ ընդ էր՝ կամ ամ պատճառն եղեն զձէնջ առ արքայի․ և կամ արդարև այնչափ գանձք իցեն․ զոր ասացին ։ 10 *Եւ կաց յառաջ քահանայապետն՝ և ասէ․ են՝ են արդարև աւանդք այրեաց և որբոց ՚ի պահ եդեալ ։ 11 *Իցեն ևս և որկանեայ տուբեանց առն աւագի․ այլ ոչ եթէ այն չափ որչափ ամբաստանողն նամակագիրն՝ անօրէնն սիմոն խօսեցաւ․ ընդ ամ թէ քաղ.ք իցեն քանքարք արծաթոյ չորեքհարիւր․ և քանքարք ոսկւոյ երկերիւր ։ 12 *Այլ զրկել զհաւատացեալս՝ վ֊ն մեծապատիւ շքեղ ընդ ամ աշխարհամուր անխաբ տաճարին, չիք ինչ հնար ։ 13 *Նա իբրև լսէր զբանս քահանայապետին՝ զարքունի հրամանն ՚ի մէջ առնոյր՝ և ասէր, ՚ի սպաս և ՚ի պէտս արքունի երթալ գանձիդ այդմիկ ։ 14 *Որ և ժամ յայտ առնէր․ մտանել՝ համարել՝ առնուլ պատրաստէր ըստ հրամանին արքունի․ և անդ լինէր ոչ սակաւ ջան և վտանգ խռովութե քաղաքին ։ 15 *Քահանայքն ինքնին անկեալք թաւալէին առաջի սեղանոյն նովին սրբութե պատմուճանաւն․ աղաչէին զայն՝ որ վ֊ն աւանդապահ զգուշութե զօրէնս հաստատեաց․ որ զայս ողջ անարատ յիւրաքանչիւր աւանդատուրս հաստատել մարթասցին ։ 16 *Անդ էր տեսանել զտեսիլ քահանայապետին․ և զհաւելելի մխոս իւր․ զի տեսիլն և գոյն երեսացն

սացն ցուցանէր զորտին թախծութիւն
* Որ իջեալ՝ մածեալ՝ պատեալ պա_ 17
շարէր զնա ահ և երկիւղ՝ և տոսկումն
մարմնոյ. յայնմ ամենայնէ յայտնի էր
տեսանելեացն սրտին տագտկութիւն։
* Դարձեալ յիւրաքանչիւր յապարա 18
նիցն դաս դաս մտանէին 'ի համար աշ
խարհի խնդրուածս. զի մի՛ յարհա_
մարհանս՝ պատիժ մեծի տաճարին
գնասցէ։ * Եւ կանայք քրձազգածք 19
ընդ հրապարակս աշխարհէին. արգե_
լականք 'ի կուսաստանաց անտի 'ի
դրունս և 'ի պարիսպս ընթանային. և
կէսքն ընդ պատուհանս արտաքս կար
կառէին։ * Եւ ամենեքեան առ հա_ 20
սարակ աղօթից բարբառով զձեռս
համբարձեալ յերկինս՝ մտտուճնս տա
տանէին։ * Եւ անդ էր ողորմ տեսիլ 21
տեսանել. զի առհասարակ անկեալ
մարդկան՝ զաղօթս՝ թաւալելով յեր
կինս մատուցանել. զմեծապէս սքան
չելի շտապ տագնապի ըստ քահանայա
պետին կարծեաց։ * Եւ նոքա այն_ 22
պէս թաւալելով անկեալ առ ամենա
կալն կարդային. աւանդս հաւատա_
ցելոցն 'ի հաւատացեալսն ողջ անա_
րատ հաստուցանել։ * Եւ Հեղիոդորոս 23
յայտնութեն վճիռն գտանէր. և մինչ
դեռ նա սպասաւորաւն հանդերձ ընդ
գանձին տուն շրջէր։ * Որ 'ի վերայ 24
ոգւոյ. և ամ իշխանութեանց զօրու_
թի'ն 'ի ձեռս իւր ունի. երևոյթ մի նշա
նի մեծի արար. զի ամենեքին՝ որք իշ
խեցին մտանել ընդ նմա, լուծան՝
լքան՝ ընդ արմացան՝ 'ի պարտութիւն
վատթարութե մտանեցան յԱՅ զօ_
րութենէ անտի։ * Որ երևեցաւ նց 25
յանկարծ երիվար մի մեծաշուք հեծե
լով հանդերձ. երևելի զարդու 'ի վէն
ոսկի վառելով։ * Եւ այլ երկու արք 26
երիտասարդք հզօրեղք 'ի զարդ գեղե
ցիկ զարդարեալք առաջի հեծելոյն.
որք մտեան վաղվաղակի յաջմէ և
յահեկէ. 'ի մեծամեծս հարուածս
հարկանէին զՀեղիոդորոս։ * Մինչև 27
անկեալ յանգգայ թմբրեալ մերձ 'ի
մահ բառնային զնա։ * Որ այնչափ 28
շքով՝ և սաստիւ և սպասաւորաւ,
մտեալ ճեմէր 'ի տան գանձին. արդ
բարձեալ բերէին յանզգայ՝ զչափ ա_
ռեալ։ * Որ յայտնապէս զօրութիւքն 29
ԱՅ 'ի վր հասեալ։ անմռունչ՝ անբար
բառ՝ պակասեալ յամ յուսոյ փրկութե՝
ընկեցեալ յերկիր կիսամահ դնիւր։
* Իսկ որք զնէեմեանն էին, զՏր օրհ 30
նէին. որ փառաւորէր զիւր տեղին
սրբութե։ և զայն՝ որ փոքր մի յառաջ
խռովութբ լցեալ էր զտաճարն. յեր

31 եւիլ փառացն ամենակալ Տն խնդու
թբ և ուրախութբ լնուլ. և անպա
կաս զուարթութբ։ * Յայնժամ
փութապէս ոմանք յեկելոց անտի.
բարեկիրք՝ աւագք՝ ընկերք զօրավա_
րին. յոտս հասանէին ոնեալ՝ խնդրել
'ի բարձրելոյն գոնէ շունչն շնորհել
նմա։ այնպէս անկեալ չարաչար. 'ի
վերայ յետին ժամանակի այլոյն ցամա
32 քեալ դնիւր։ * Խորհուրդ կալեալ քա_
հանայապետն. դուցէ կարծիս ինչ
տայցէ թագաւորին իբրև դաւով
ինչ 'ի նմանէ. կամ 'ի հրէից անտի
զայրն վնասեալ 'ի խնդրուածս լինէր.
պատարագս մատուցանէր վասն առն
33 փրկութե։ * Այն ինչ քաւութիւքն 'ի
ձեռս քահանայապետին մատչէին,
վաղվաղակի նոյն երիտասարդք գային՝
իջանէին առաջի Հեղիոդորոսի. նո_
վին հանդերձով զարդարեալ. և ա_
սէին՝ բազում շնորհս դու ունեալ քա_
հանայապետի կաշխիր. վասն նորա՝
քեզ Տր 'ի ձեռն նորա զոգիդ շնոր_
34 հեաց։ * Այլ դու վասն նորա այդ_
չափ տանջանօք պատուհասեալ, պատ
մեսջիր զայդչափ մեծութի զօրու_
թեցն ԱՅ առ ամենեսեան. և զայս
իբրև ասացին, անդրէն վերացան։
35 * Հեղիոդորոս իբրև անձին զգացյամե
կացեալ վաղվաղակի. ողջակէզս պա
տարագաց մատուցանէր Տն. ուխտս
և աղօթս մեծամեծս կատարէր Տն.
որ շնորհեաց նմա զոգին. և անդէն
'ի նոյնչափ յառաջին զօրացոյց. և զքա
հանայապետն զոնիայ մեծապատիւ
մեծապարգև մեծարեաց. և ինքն
չու արար՝ խաղաց՝ գնաց անդրէն առ
36 թագաւորն։ * Եւ ընդ ամենայն տե
ղիս ընդր զսքանչելիսն ԱՅ՝ վկայու_
թբ. զոր ինքնին իսկ իւրովք աչօք
37 տեսեալ լինէր։ * Թագաւորն իբրև
սկսաւ հարցանել զՀեղիոդորոս. եթէ
ո՞րպէս՝ զի՞արդ՝ յոր գործ երթեալն
էիր. զինչ վճիռեցեր. սկսաւ տալ զբոյս
քանքար տալով և ասէ՝ ո՞հ յերուսա_
38 ղէմ երթեալ երթիցէ։ * Որ ոք ձեր
թշնամի իցէ. և իրաց մեծաց ձերոյ
վնասակար իցէ, զնա հրամայեսջիք
յղել. և գտջիք զնա անտի այսր գա_
նալից չարագան. թէ ապրիլ միայն
39 կարասցէ։ * Որ այնպէս ճշմարիտ
մեծ զօրութի նստի 'ի տեղւոջ անդ.
զի ինքն իսկ՝ որոյ զօրութիւն յերկնից
երկինս է, այցելու և օգնական է նր.
և որ միանգամ թշնամութբ, կամ
թէ արհամարհանօք յայն տեղի հա_
սանէ, մեծամեծ հարուածօք հարեալ
40 է. թէ արձակեսցէ և եթ։ * Սասն
հե_

հեղիոդորայ՝ և գանձին տանն պաշտարելոյ՝ այսչափ բանք եղեն։

## ԳԼ։ Դ։

1 Բայց վն սիմօնի՝ որ գանձին և գաւառին նամակադիր էր. առաւել ևս յանձնէր. ամբաստան լինէր զօնիայ. եթէ նա ինքն գլխովին. որ զհեղիոդորոսն շարժեաց՝ և լլկեաց. և նմանչարեացն ինքն է առաջնորդ և գործօղ։ 2 * Եւ զբարերար քաղաքին՝ և զպայցելու. և զերախտաւոր ազգին. և զնախանձայոյզ զվրէժխնդիր օրէնացն՝ իբրև զմտասակար իրացն արքունի իշխէր 'ի ներքս առնել կշտամբելով։ 3 * Եւ այնչափ վարէր զհեռ և զնախանձ թշնամութե. մինչև զոմանց՝ զորս 'ի գործ կացուցեալ էր շմաւօնի՝ մահապարտ առնէր նոցա։ 4 * Եւ իբրև զայնչափ անհնարին տեսանէր հակառակութե օնիա. դարձեալ 'ի մոլորութի անդր հայէր ապողոնեայ. որ ատորին ասորւոց. և տաճկաստանի սպարապետն էր. զի և նա չարեաց ընկեր՝ և գործոց կցորդ էր սիմօնի. յայնչափ զմիտս թագաւորին բորբոքէին։ 5 * Բնհնար համարեցաւ այնուհետև զհասարակաց օգուտ 'ի մէջ մատուցանել՝ առանց օգնականութե թագաւորի առն հրամանի։ 6 * Մանաւանդ զի տեսանէր՝ սիմօնն անդադար 'ի վերայ խարդախութեց խորամանկութե ան հանդիստ ջանացեալ։ 7 * Իբրև սելևկիոս փոխեցաւ յաշխարհէ. և էառ զթագաւորութիւն անտիոքոս. որ անուանեալն կոչիւր երևելի. յասոմն անուն ոմն՝ եղբայր օնիայ. ջանացաւ շնութե մտանել՝ և հանել զքահանայութին յօնիայ։ 8 * Խոստացաւ տալ յարքունիս վաթսուն քանքար։ 9 * Եւ այլ հարիւր և ևս մատուցից՝ ասէ. եթէ գործն յաջողեսցի. զքաղաքն 'ի ձեզ նուաճեցից. թատրոնս՝ և զկրկէսս շինեցից՝ ասէ. և եփեսացւոցն 'ի ձեր անուն անտիոքացիս գրեցից։ 10 * Իբրև յանձն էառ թագաւորն. եգիտ նա զիշխանութին՝ զոր խնդրէր՝ հետ ընդ հետ վաղվաղակի. 'ի յունաց հեթանոսութի անդր՝ զընտանի օրէնս դարձուցանէր։ 11 * Զպարգևսն զառաջինսն զարքունի՝ որք 'ի ձեռն յօհաննու, և պտողոմեայ հօր՝ 'ի ժամանակի հրեշտակութեն, որ վն հասարակաց սիրոյ օգնականութե կատարեցան, և զկրօնսն օրինաւորս՝ 'ի բաց քակեցին. և անօրէնութե նոր կրօնս 'ի ներքս արկանէր։ 12 * Զի 'ի ներքս ընդ բերդաւն իսկ թատրոնս և երիտասարդանոցս շինէր. ժիրա-ժիր մանկունս ընտրանաւ զայն յուսումն արուեստականաց տայի<br>ն։ 13 * Եւ այնպէս ինն եւանդն ածէին. սկիզբն արարեալ այլազգութե և հեթանոսութե. վասն ամպարիշտ և չքահանայապետութե յասոնայ անհնարին մոլորութեն։ 14 * Զի յայնմհետէ թողեալ էր զպաշտօն պատարագաց սեղանոյն. և զսպաս տաճարին. և արհամարհեալ էր զողջակէզս պատարագացն. յօժարագոյն տային զանձինս իւրեանց ազգ քահանայիցն 'ի մարզիկս և բռնամարտիկ մարտիկս. և յանօրէն բաշխոյս կաքաւչայ. և արդնըն կեց տեգընկեց ձայնատուր ժամանակաւն։ 15 * Եւ զհայրենի պատիւն առոչինչ համարէին. բայց զանօրէն հեթանոսութե փառս՝ քան օրհնութե փառս լաւ համարէին։ 16 * Վն այսորիկ իսկ և վաղ հասանէին 'ի վշտ նոցա նեղութիւն. որք շուրջանակի հասեալ՝ պատեալ՝ պաշարեալ պահէին. զի որոց ընդ բարս և ընդ գնացս նախանձէին՝ և կամէին նմին նմանիլ նոցա, զնոսին իսկ դահիճս՝ և թշնամիս՝ և տանջիչս անձամբ անձին իսկ ինքեանց պատրաստեցին։ 17 * Զի անօրինել ոք յԱծ եղէն օրէնսն դիւրին մի համարեսցի. այլ զայս ժմ, ժամանակդ որ առաջի կայ՝ յայտնապէս պատմեսցէ։ 18 * Բրդ է ժամանակ՝ եկեալ հասեալ էր դից պաշտօնն. հինգ ամեակ պաշտաման 'ի ծուր քաղաքին առաջի թագաւորին։ 19 * Յայն պաշտօն՝ անօրէնն յասոն խաղալիկս և հանդիսականս 'ի սուրբ եհէմ քաղաքէ՝ անուանեալս անտիոքացիս յղէր։ 'ի ձեռն տայր նոցա երեքհարիւր սատերս 'ի գինս զոհից վահագնի պաշտաման. իբրև եկին՝ բերին՝ որք բերէինն. աղաչեցին՝ զի մի խառնեսցեն զայն արծաթ 'ի զոհս կռոցն պաշտաման. զի ոչ էր պարտ և պատշաճ 'ի սուրբ տեղւոջէ անտի գանձ երթալ զոհից կռոց դիւացն պաշտաման։ 20 * Նոքա որք առին՝ առնուլ առին վն այնորիկ. որ ետ բերել յանուն զոհիցն պաշտաման. բայց վասն բարեացն աղաչելոյ՝ անդր ինչ ոչ խառնեցին. այլ ետուն 'ի գործ արքունի վարձնաւաց գործելոյ։ 21 * Բայց հետ հրեշտակութեան ապօղոնեայ մենեսթեանց յերկիրն եգիպտացւոց՝ պտողոմէոս թագաւորն՝ և էառ զթագ փոխանակ նր անտիոքոս. և իբրև օտարացեալ զինն համարեալ զանձն իւր կողմանցս այսոցիկ. դարձ արար՝ խաղաց՝ գնաց՝ եկն 'ի կողմանս յոպպէացւոց. անտի եկն յեհմ։ 22 * Եւ անդ մեծապէս մեծա-

ոջձնէր

և զերբու- աստեղծա- ցեօ

և եպօղէ ծառէ

արքը մէկ ժամանակ

ծարեցաւ 'ի յասոնէ՝ և 'ի քաղաքէ անտի. մեծամեծ սքանչելեօք՝ ջահիւք՝ և բոցաձաձանչ սպասուք. ապա անտի խաղաց՝ գնաց 'ի կողմանս տաճկաստանի ամ զօրօք հանդերձ: *Ապա 23 յետ երից ամաց ժամանակի՝ առաքեաց յասոն զմենեղաւոս զեղբայր սիմոնի մոլեկանի. 'ի ձեռն ետ նմա տանիլ առ արքայ զգանձն զարքունի: *Նա իբրև յանդիման եղև արքային՝ 24 և մեծարեցաւ 'ի նմանէ. յանձն իւր ձկսաւ կորզել զքահանայութիւն. և զանցանել զյասոնաւ. յաւել ևս 'ի խակ գանձին այլ ևս երեքհարիւր քանքար: *Նա առեալ զայր զհրաման իշխանու- 25 թեան արքունի. եկն՝ էհաս. քահանայապետութեան լինել արժանի գործ ոչ գործէր. այլ զսրտմտութիւն դառնութեան չարաչար գազանաց վարեալ բերէր: *Նա յասոնն այն որ դաւել զեւրոյ 26 եղբօր զքահանայութիւնն. նոյնպէս այլ տարաւ. և նա փախստեայ յերկիրն ամոնացւոց փախստական անկանիւր: *Իսկ մենեղաւոս առնուլ էառ 'ի 27 ձեռն զիշխանութիւն քահանայութեանն. բայց զայն ինչ՝ որ թագաւորին խոստացեալ էր. ողջ ոչ կարէր առնել. իբրև սոփեր՝ պահանջել՝ տագնապել սկսաւ հազարապետն զդղեակ բերդին: *Զի նմա էր յանձն, հանել ըզ- 28 հարկ աշխարհին. վասն այսորիկ և երկոքին 'ի միասին 'ի դուռն կոչեցան: *Նա 29 իբրև ետես մենեղաւոս. եթէ չէ զհարկն 'ի դուրս հատուցանելոյ՝ եմուտ ընդ փոխանակաւ՝ և կացոյց փոխանակաւ զլիւսիմաքոս զեղբայր իւր. և սոստրատոս կայր 'ի վերայ գործոյն կիպրացւոց: *Իբրև այս իրք այսպէս 30 հաստատեալ կային, դէպ եղև տարսացւոց և մալոտացւոց ժամանակին 'ի գրգիռ վայրի դիպիլ. վասնզի տուեալ էր զնոսա յուտեստ անտիոքիդեայ հարճի թագաւորին: *Փոյթ կալաւ չու 31 առնել ցածուցանել զնոսա. եթող 'ի տեղւոջ իւրում փոխանակ իւր զանդրոնիկոս 'ի նմին պատուէ: *Իբրև ժա- 32 մանակ իւր պարապոյ դտեալ մենեղաւոս՝ մեղմով սպաս ոսկի գողացաւ 'ի տաճարէ անտի. և ետ նա անդրոնիկեայ. նաև այլևս վաճառեալ էր նա 'ի ծուր. և յայլ քաղաքս. որք շուրջ զնովաւ էին: *Զոր յանդիմանութեամբ յայտ 33 առնէր ոնիա յամրէ անտի. յոր անկեալ էր 'ի դափնայ անտիոքացւոց: *Վասն այսորիկ մենեղաւոս. իբր իւր 34 առարեալ զանդրոնիկոս՝ աղաչէր զնա. և նովաւ ջանայր զբռամբ արկանել զոնիայ. նա գնաց՝ և եկն առ ոնիայ՝ և

նէ

հաւատացուցանէր նմա նենգութեամբ՝ և դաշինս հաւատարիմս կնքէր ընդ նմա ծանր ծանր երդմամբք. սակայն հաւանեցոյց զնա ելանել յամրէ անտի. թէպէտ և էր ինքն 'ի միտս կասկածոտ. և անդրէն իբրև եհան՝ խողխողեաց. ամենևին ոչ զանգիտեաց 35 յիրաւանցն արդարութեան: *Վասն այսորիկ ոչ միայն հրէայք՝ այլև հեթանոսք բարկացեալք՝ և կարիս առնէին վասն ան- 36 տարապարտ մահուանն: *Եւ թագաւորն իբրև դարձաւ 'ի կողմանցն կիւլիկեայ. առաջի անկանէին քաղաքացի քաղաքաց հրէայք, և հեթանոսք սրտցաւութեամբ. վասն առնն զուր մեռելոյ. տարապարտուց կորուսելոյ: 37 *Յայնր վերայ սրտիմտօք անտիոքոս գժգմնեցաւ՝ 'ի գութ դարձաւ՝ և արտասուեաց յոյժ 'ի վերայ սրբութեան և 38 բազում խմաստութեան առնն: *Նա ջեռաւ՝ բորբոքեցաւ 'ի սրտմտութ բարկութեան իւրոյ. և անդրէն հրամայեաց զգլխով ածել զծիրանիսն՝ զանդրոնիկոս մերկացեալ 'ի հանդերձէ իւրմէ, շուրջ ածել զքաղաքաւն՝ և 'ի նմին տեղւոջ ուր զոնիայն անօրինեցին, հրամայեաց սպանանել զանօրէն մահապարտին. 'ի Տէ զարժանի տանջանս 'ի վերայ չարագործին հատու- 39 ցելոյ: *Իբրև բազում գաղտագողոնք լինէին գանձին 'ի ձեռն լիւսիմաքեայ մենեղայի խորհրդով. և համբաւն 'ի դուրս յաճախիւր. ժողովեցան զօրքն 'ի վերայ լիւսիմաքեայ. քանզի բազում նուագս ոսկիս կորուսեալ 'ի միջոյ հա- 40 մարուէն: *Իբրև սկսան զօրքն տագնապիլ. և լի բարկութեամբ 'ի վերայ յարձակիլ. վառեցոյց լիւսիմաքոս արս իբրև երեքհազարս. սկսաւ ձեռն 'ի գործ առնել. և սկիզբն առնել գործոյն չարութեան. արամբ միով, որ խուժադուժ ևս էր տեսանելով քան զմտօքն 41 թանձրութեամբ: *Իբրև տեսին լիւսիմաքեայ զդաւն և զնենգութիւնն՝ որ եղև. խռնեցան վաղվաղակի. ձեռն 'ի գործ առնէին. ոմն վէմս՝ ոմն վիրգս՝ կէսքն զաւազն՝ զխիճս հողախառնս առ հասարակ յարձակելոցն 'ի վերայ 42 արկանէին: *Զոմանս վիրաւորս. զոմանս կառափնատս արձակէին. զբազումս սպանանէին. զամենեսին հասարակ 'ի փախուստ դարձուցանէին. զնոյն ինքն սեղանազերծ, զտաճարակապուտ՝ զգանձի տամբն արկանէին 43 փախստեայ: *Վասն այսր ամ լինէին 44 դատաստանքն ընդ մենեղայ: *Իբրև եկն՝ և էջ թագաւորն 'ի ծուր. յանդիման նր իսկ էին դատաստանքն. զի

 եկին

եկին արք երեք 'ի ծերակոյտ ժողովը դնէին ցուցանել զիրաւունսն ։* Իբրև 45 'ի պարտուն մատնեցաւ Մենեղաւոս , խոստացաւ գանձ բազում տալ Պտո_ ղոմեայ՝ զի հաճեսցի զմիտս նորա ։ *Ապա այսորիկ առեալ զթագաւորն 46 մեկուսի՝ իբրև զօսանաց պատճա_ ռանաւ՝ շրջեաց զմիտս նորա ։* Զամ 47 չարեացապարտ զՄենեղաւոս արձա_ կել 'ի պարտեաց անտի ։ և զայնս տա_ ռապեալս ։ որք թէպէտ առաջի խազ_ տեաց դատ վարէին , իրաւունս գտա նէին արձակեալք՝ դատեալք անպարտք երթային ։ զնա մահապարտս արարին ։ *Եւ վաղվաղակի զանիրաւութե զպա_ 48 տիժսն զնոքօք արկանէին ։ որք վասն քաղաքին՝ և գնդին՝ և սպասուն սր_ բութե դատել եկեալ էին ։ *Եւ վս 49 այսր ոմն ծուրացիքն չարատեացք ա_ ռատապէս սրտացաւութե հանդեր ձեցին զնա ։ * Եւ յուղարկեցին զՄե_ 50 նեղաւոս վս իշխանացն գժտութե և ագահութե ։ հաստատեալ կայր չա րախօսութի մեծեղեան զհասու քա_ ղաքացւոց իւրոց կացուցանէր ։

## Գլ. Ե.

Ընդ ժամանակօք երկրորդ գալստ_ 1 եանն ։ Անտիոքոս յերկիրն Եգիպ տացւոց առաքէր 'ի կողմանցն Անտիո քացւոց ։ * Իբր դէպ լինէր ընդ ամ 2 քաղաքն յաւուրս քառասուն՝ երևիլ ընդ երկինս և ընդ երկիր ։ արս հե_ ծեալս տիգաւորս 'ի զարդ ոսկի *Ա 3 ռեալս՝ զարդարեալս՝ արշաւեալս՝ յար ձակեալս ընդ միմեանս ։ անդ էր լսել թնդիւն վահանաց ։ շկահիւն զաղե_ ղանց ։ շողիւն սուսերաց ։ շաչիւն նշա_ նաց ։ զշառաչիւն նետից ։ զփայլիւն զոսկեղէն վառելոց ։ *Եւ ամենեքին 4 մնկեալ աղաչէին զայն նշանս 'ի բարի ինչ կատարել ։ *Իբրև շուինդն իմն 5 յանկարծուստ համբաւի հարկանէր ։ իբրև Անտիոքոս փոխեալ յաշխարհէ ։ առնոյր Յասոն ոչինչ պակաս քան զհա զար վառեալ՝ և յարձակէր 'ի վր քաղա քին ։ և նոքա վս յանկարծ դաւոյն 'ի պարսպէ անտի մերժէին ։ և Մենեղաւ ոս արշաւեալ 'ի քաղաք անդր հասա նէր ։* Այլ Յասոն մոլեգին՝ յանխնայ 6 մնկեալ գործէր մեծամեծ կոտորած քաղաքացւոյն իւրոց՝ իբրև 'ի մէջ թշ նամեաց գործէր ։ և ոչ ածէր զմտաւ զտոհմային զքաղաքակից զընկերու թեն բարեկամութի ։ զի 'ի թշուառու թի դարձուցանէր ։ այլ համարէր իբ րև 'ի մէջ թշնամեաց անկանիլ ստէպ ստէպ տագնապիւ ։ և 'ի վր թշնամւոյն

7 նշան յաղթութե կանգնել ։ *Ապա իշխանութե ինչ ոչ կարաց հասանել ։ բայց 'ի կատարած զամօթ դաւոյն ժառանգէր ։ և ինքն փախստեայ ան_ 8 կանէր 'ի կողմանս Ամոնացւոց ։*Յում մէ չարաչար կատարած վախճանի ըն դունէր ։ արգելեալ 'ի բանտի Արետայ Արաբացւոց արքայի ։ դարձեալ 'ի քա ղաքէ 'ի քաղաք փախստեայ լինէր ։ ա տելի՝ հալածական յամենեցունց իբրև ապստամբ յօրինացն ։ պղծեալ՝ գար_ շեցեալ՝ իբրև դաւառի՝ և գնդի՝ և քա ղաքի մատնիչ՝ և դաւհիճ ։ յերկիրն ե_ գիպտացւոց հեռացեալ թափեաւ ։ 9 * Նազուտ է անթիէս յիւրմէ աշխար հէ օտարացոյց ։ և ինքն օտարացեալ 10 'ի մէջ օտարաց կորեաւ ։ * Անուղ ։ անխնամ ։ անհանդերձ ։ և գերեզ_ մանացն չեղև հայրենեացն արժանի ։ 11 *Իբրև ազդ եղև արքայի վս իրացն եղելոց ։ ապստամբ համարեցաւ թա գաւորն զհրէաստան յիւրմէ ։ վասն այսորիկ փութացաւ՝ գնաց յերկրէն եգիպտացւոց զազանացեալ սրտիւ ։ եկն՝ էառ զքաղաքն 'ի սուր սայր սու 12 սերի՝ և 'ի տէգս նիզակաց ։ *Եւ հրա ման ետ զօրացն՝ որ 'ի բուռն անկցի՝ յանխնայս կոտորեսցեն ։ և որք յա_ պարանս ամրասցին՝ անդէն սատակես 13 ցեն ։*Եւ անդ լինէր ծերոց և տղայոց առ հասարակ կոտորած ։ կանանց և մանկանց առ հասարակ սատակումն ։ կուսից և կուսանաց առ հասարակ կո 14 տորած ։ *Եւ ութ բիւրս յայն երիս աւուրս միանգամայն կոտորեցին ։ և զչորս բիւրսն 'ի վաճառ ի ոչինչ պակաս լաւութե քան զսպանեալսն վաճառե 15 ցին ։*Եւ իբրև այսու չարեօք ոչ յա_ գեցաւ ։ իշխեաց ձեռնամուխ լինել 'ի նբս ամ աշխարհաց ։ իշխեաց մտանել 'ի տաճար անդր ։ առաջնորդ 'ի ձեռս ունէր զՄենեղաւոս ։ որ օրինաց աշ_ խարհին և գնդին մատնիչ և դաւհիճ 16 եղեալ էր ։ *Եւ պիղծ և անօրէն ձե_ ռօքն զսբ զսպաս սեղանոյն ։ և որ յայ լոց թագաւորաց և յայլոց քաղաքաց եդեալ էր 'ի սրբութի յաճումն և 'ի փառս տեղւոյն ։ զայն առեալ պղծոյն 17 բաշխէին ։ * Խերևս հպարտացեալ յիմարեալ էր 'ի միտս իւր Անտիոքոս և ոչ էր ։ եթէ վասն մեղաց և անօ_ րէնութե քաղաքիս բնակչաց բարկա_ ցեալ է սոցա Տր՝ վասն այսորիկ եղեն արհամարհանք 'ի վերայ տեղւոյն սր_ 18 բութե ։ * Զի եթէ ոչ մեղօք մեծօք պաշարեալ էին ։ որպէս Հեղիոդորոսն առաքեցաւ 'ի Սելևկեայ արքայէ ։ զի առաքեցաւ նա համար առնել գան_ ձին ։

ձին. զի ոտ արդեօք վաղվաղակի մօտէ
կործանիւր 'ի հպարտութենէ իւրմէ ։
19 *Եւ ո՛չ վասն տեղւոյն զազգն. այլ
վասն ազգին զտեղին ընտրեաց Տր ։
20 *Վասնզի և տեղին ինքն ժառանգեաց
զազգին խոտորութիւն. որպէս և յետոյ
բարեացն կցորդ լինէր. 'ի միւսան_
գամ հաճիլ մեծի փառօք ուղղութեն ։
21 *Եւ անտիոքոսն ութհարիւր քան_
քար 'ի վն ինն հարիւրոյն բարձեալ
բերէր 'ի տաճարէ անտի. արագ ա_
րագ հասանէր 'ի քաղաքն անտիոքա_
ցւոց հպարտացեալ մտօք. համարէր
զծով 'ի ցամաք. և զցամաք 'ի ծով
փոփոխել ։ 22 *Եւ անդ թողուր վարդա
պետս խիստս. չարչարել զմնացորդսն
երուսաղէմացւոց. և զփիլիպպոս յազ
գէ փռանգս. բայց 'ի բարուց խժդժա
գոյն ևս քան զայն. որ էթող զնա
անդ ։ 23 *Եւ 'ի գարիզին զանդրոնի_
կոս. և 'ի վն սոցա զմենեղաւոս. որ
չարաչարեաւ քան զնոսա 'ի վն հասեալ
դատէր զքաղաքն ։ 24 *Բայց զի ունէր
սակաւ մի գութ ընդ հրէայսն. առա
քեաց նա մաշռէ զապողոնիոս երկուք
բիւրուք զօրօք. թո՛ղ զհազար զօրն
զառաջինն. զի զամ մարդ հասակա_
չափ կոտորեսցէ. և զկանայս և զման_
կունս վաճառեսցէ ։ 25 *Սա իբրև եկն
յէմ. նախ զառաջինն խաղաղութե
դաւով եմուտ. և եղև անդ մինչև յօրն
ութ՝ յօրն շաբաթուց. և իբրև յօրն շա
բաթուց եգիտ զհրէայսն դատար_
կացեալս՝ հրաման ետ զօրացն իւրոց
վառել ։ 26 *Որք միանգամ 'ի զնին տես_
լեանն եկին. սուր 'ի վերայ եդեալ կո
տորեաց. և ընդ քաղաքն ընդ ամ զի_
նու համդերձ այսր անդր վառեալք
ընթանային. առ հասարակ տարա_
ծեալ դիաթաւալ կացուցանէին ։
27 *Եւ յուդա մակաբէ՝ որ տասներորդն
եղեալ էր. փախուցեալ լինէր՝ յանապատ
ելանէր. գազանակեաց կեանս 'ի լերինս
անցուցանէր. և այնպէս գնդաւն՝ որք
ը նմա էին՝ խոտաբուտ կերակուր կե
րակրեալ անցուցանէին զժամանակն.
զի մի 'ի պղծութիւնս մերձեսցին ։

## Գլ. Ե.

1 Յետ բազում ժամանակաց առա
քեաց թագաւորն զաթենացի
ծերունի. ստիպել տագնապել զհրէ_
այսն անցանել զհարցն օրինօք. և յօ
րէնսն Այ այլ մի ևս յամենալ ։ 2 *Եւ
պղծել զտաճարն եմի. անուանել
զնա յոլիմպեան յանուն որմզդական
դիցն ողիմպիացւոց. որք 'ի գարիզին
էին. որպէս որք զտեղին բնակեալ

նատէին. հիւրասէր որմզդական դից
վանատրի ։ 3 *Եւ չարաչար դժուարին
նեղութիւն չարեաց 'ի վերայ հասուցա_
նէին ։ 4 *Զտաճարն ութ պղծութեամբ
արուեստականօք հեթանոսաց լնոյր.
և սրբութե սրահն արամբք և կանամբք
միմեանց խառնակութեամբ յաղտեղու_
թիւն դարձուցանէին. և որինչ ոչ ևս ար
ժանի էր ինչ՝ զայն 'ի ներքս համար_
ձակ տանէին ։ 5 *Եւ սեղանն ինքնին
զլխոլին անարգելովք յօրինաց՝ և խո
տորելովք լնուին ։ 6 *Եւ անդ էր ոչ
զօրէնս շաբաթուց տեսանել. և ոչ
զտօնս տարեկանաց զհայրենիս պա_
հել. և ոչ բնաւ ամենևին հրէայ անուն
անուանել իշխել ։ 7 *Սարէին. ածէին
ստէպ ստէպ տագնապաւ. յամս աւուր
յօր տօնի ծննդեան թագաւորին՝ զի
զոհեսցեն. իբրև տօն հասանէր սպան_
դարամետական պաշտամանն. տագ_
նապէին զնա. պսակեալս թաւ ոստովք
սպանդարամետին կաքաւել ։ 8 *Հրա_
ման առաքեցին յամ մօտաքաղաքս
պաշտօնատարս. իբրև բանս 'ի բերան
եդին պտղոմեացիքն. յոր հասու
ցեն զոհիւք զպաշտօնն պաշտեսցեն ։
9 *Եւ այնք՝ որք ոչ յանձնառու լինէին
զոհել՝ անդէն սուր 'ի վերայ դնել ։
և անդ էր տեսանել շտապ տագնապի
տառապանս չարչարելոցն ։ 10 *Նաև_
կադիր եղեն զերկուց կանանց՝ վասն
զորդիսն իւրեանց թլփատելոյ. ածին
վաղվաղակի՝ զմանկունսն զատեանց
կախեցին. և զնոսա ը հրապարակս
առ առակէ շրջեցուցանէին. ապա 'ի
պարսպաց անտի 'ի վայր հոսեցին ։
11 *Այլքն երթեալ գաղտուկ յայրսն
մօտաւորս՝ զշաբաթու աւուրսն ան_
ցուցանէին ։ իբրև 'ի վն հասանէին,
կենդանւոյն խանձատեալ սրով սպա
նանէին. վասն երկիւղածութե առ_
ուրն փափկութե՝ և օրինացն սրբու_
թե ։ 12 *Եւ ես աղաչեմ զամենեսին.
որք զգիրսդ յակն արկանիցէք. մի ինչ
վասն ազգին խղճիցէք. և միշտ զայս
ամ առ սատակմանն տոհմին համարի_
ցիք. այլ 'ի խրատ ազգին մերոյ ։ 13 *Եւ
ոչ առ բազում ժամանակս ինչ թողու_
զանօրէնս. այլ վաղվաղակի զնշանս
իւր և զարուեստս իւր յայտնէ ։ 14 *Զի
ոչ եթէ որպէս առ այլ հեթանոսս
երկայնամիտ լինի Տր. մինչև լցցեն
զչափ մեղաց իւրեանց. եկեսցեն՝ հա
սցեն 'ի դատաստանս անհնարինս ։
15 *Նոյնպէս և առ մեօք կատարէ զամ.
զի հասցուք մեք 'ի խտեղի դատաստանի ։
16 *Եւ մօտ առ մօտ խրատէ. և արագ
արագ ածէ 'ի վերայ զողորմութիւն ։

17 * Զայս բանս ընդ ձեզ վասն յիշատակի բանիցդ խօսեցայք. արդ՝ անդրէն 'ի գլուխ պատմելոյն մատիցուք։

18 * Եղիազարոս այր մեծ ընդ առաջինս 'ի գնդի անդ. լցեալ աւուրբք. ծերացեալ հասակաւ. գեղեցիկ երեսօք. ածեալ գայր 'ի բերան. ստիպէին ուտել խոզենի։ 19 * Նորա 'ի միտ եդեալ՝ յաւժարեալ՝ պնտեալ սրտիւ. յանձն առեալ զմահ քաջ անուամբ՝ քան ըզկեանս խղճիւ. և ընկերաց ստգտանելով. ընտրեաց ինքնակամ հասանել 'ի տանջանս. ձեռներէց լինէր. թքանել՝ անարգել զպաշտօնն։ 20 * Որպէս օրէն է համբերողաց. բացէ 'ի բաց անարգել զինչ՝ որինչ ոչ է օրէն յանձին մատուցանել։ 21 * Իսկ այնք՝ որք պատրաստեալք եկեալ էին, ինքեանք առտկարութե միոյ վն անձնասէր բարուց զոհից 'ի պաշտօն. ծանօթ ևս էին առնն աւագունե. առեալ մեկուսի իւրեանց տկարութե միոջն՝ զհաստատեալ միտսն 'ի հրապոյրս ցոփութե դարձուցանել ջանային. յանձն առասեն զհրաման թագաւորին. 22 * Ասէ քեզ զայլ մի մատուցցուք. զի լուծցես զկարծիսն. և 'ի մահուանէդ ապրեսցիս. 23 * Նա գեղեցիկ խորհուրդն հաստատուն յանձին եդեալ զարժանի հասակին. ըստ ծերութե մեծութեն. ըստ երևելի վայելչութեանն. ըստ զուարթածաղիկ ալեացն զուարճացելոյ. ըստ գեղեցիկ 'ի մանկութե մինչև յաւագոյթ սննդեանն. մանաւանդ ըստ Ա՛ծադործ սրբութե օրինադրին կրօնից ամ կարգօք լի. արագ արագ առնէր զպատասխանին. 24 * Ոչ արժան. ոչ պատշաճ ասէ՝ մերոյ չափու հասակի կեղծաւորութբ մատնել ընդ սրբութե խոստովանութի. իցեն բազումք 'ի մանկտւոյ այտի. որք ընդակամբ հայիցին. կարծիս 'ի միտ դնիցեն՝ և ասիցեն. եթէ եղիազարոս իննսնամեայն անցեալ ծերութբ. հասեալ 'ի դուռն վախճանի՝ յայլազգութի դարձաւ. 25 * Ասէ նոքա վն իմ կեղծաւորեալք գայթագղեսցին. և զայս խիղճ միոյ և կեղտ անուն ծերութեանս յաշխարհի թողից. 26 * Իսկ արդ՝ եթէ ամենևին նոյնչափ ժամանակս կենաց չնորհիցեն ինձ՝ և 'ի ձեռս մարդկան բնաւ այլ ոչ մատնիցիմ. սակայն 'ի յաւիտենից 'ի մշտնջենաւոր ձեռաց անտի՝ ոչ կենդանեօք, և ոչ յետ կենդանութե ուրեք փախչել կարիցեմ. 27 * Վասն այսորիկ քաջութբ փոխեցայց յաշխարհէ աստի. զի արժանի իմոյ ծերութեանս երևեցայց. 28 * Ասէ օրինակ բարեաց և քաջութե մանկտւոյ թողից. զի յօժարութբ և քաջութբ 'ի վն սրբութե օրինացն մահուչափ ջանալ մարթասցին. զայս ամ իբրև ասէր, ինքնակամ՝ դիմադրաւ՝ կամակար՝ 'ի վիշտս մահուն և տանջանացն դիմէր. 29 * Նոքա՝ որք յառաջագոյն շուրջ մատուցեալ մխիթարէին. զբանս մխիթարութե 'ի թշնամութի դարձուցանէին. և զիմաստութե խորհրդեան իբրև մոլորութի համարէին. առաւել մատուցեալ 'ի տանջանս տագնապէին. 30 * Նա իբրև մերձ եղև 'ի տանջանացն անտի 'ի վախճան. երաց զբերան իւր հեծելով. սկսաւ խօսիլ զտէրունի զգիտութի սրբութե խորհրդոց՝ և ասէ. այս մի ինչ յայտ եղև. եթէ 'ի ձեռս էր իմ արձակիլ 'ի մահուս վըշտաց. զայս խստութե տանջանս մարմնոյ ընկալեալ համբերեմ. այլ հոգւով քաջ քաղցրութբ՝ վասն ահի սաստիկ Տն ընդունիմ. 31 * Ասէ սա զայս օրինակ պատերազմեալ՝ յաշխարհէ փոխեցաւ.

զհաստա֊ տուն

## ԳԼ. Է.

1 Դէպ եղև եղբարս եօթն մարբն հանդերձ կալեալս ածել յառաջեան թագաւորին. 'ի խոշտանկանս տագնապի գանէին ուտել զխոզենի. 2 * Մի 'ի նոցանէն նախահատակեցաւ յառաջագոյն. սկսաւ խօսիլ՝ և ասէ. զի՞ կայք անցեալ. կամ զմեզ զինչ հարցանելոց էք. մեք եմք պատրաստեալք 'ի մեռանիլ քան անցանիլ ըստ օրէնս հայրենիս. 3 * Բարկութբ՝ և սրտմտութբ լի եղև թագաւորն. հրաման ետ ջեռուցանել տապակս՝ և կաթսայս. և անիւս. և պէսպէս գործիս տանջանաց պատրաստել. զայն իբրև վաղվաղակի ջեռուցին՝ պատրաստեցին. 4 * Հրամայեաց զնահատակն յառաջ կացուցանել. և նախ զլեզուն կտրեցին. և զգլխոյն մորթ զերեսօքն դարձուցին. ապա զոտս և զձեռս առաջի մօրն և եղբարցն ծայրաքաղս առնէին. 5 * Ասէ ապա իբրև 'ի բանից. և 'ի ձեռաց անպիտանս առնէր. հրամայէր կենդանւոյն 'ի տապակսն ջեռուցելս իջուցանել. ապա իբրև ձենձերն ընդերկար այնպէս 'ի տապակէ անտի ելեալ՝ դիզացեալ ծառանայր. սկսան եղբարքն ընդ միմեանս մարբն հանդերձ մխիթարել՝ և ասել. քաջութբ մեռցուք. զանուն և զոգիս ժառանգեսցուք. 6 * Հայի Տր Ա՛ծ 'ի ճգնութի պատերազմի մերոյ. և 'ի ծառայս իւր մխիթարի ‖ որպ յայտ յանդիմանութբ ասաց

‖2.( )րէ 32.36.

ասաց Մովսէս յօրհնութեն իւրում. և'ի
ծառայս իւր մխիթարեսցի ։ * Իբրև 7
առաջինն զօրինակ զայս յաշխարհէ
փոխեցաւ ։ Եւ զերկրորդն 'ի տեղի տան
ջանայցն մատուցանէին . և զգլխոյն
մորթն վարսիւքն հանդերձ զերե_
սօքն արկանէին . և անդէն հարցա_
նէին . կերիցե՞ս խոզի միս մինչև ո̃մ
մարմինդ անդամ անդամ լուծեալ է ։
* Նա ետ պատասխանի իւրեանց բար 8
բառովն, և ասէ . ո՛չ ։ վ̃ն այսորիկ և սա
'ի նոյն տանջանս տանջեալ վախճանե_
իւր ։ * Իբրև յոգւոց պարզել ապա 9
տան եղև . սկսաւ խօսիլ՝ և ասէ ցԹա
գաւորն . ա՛յ սէգ՝ հպարտ՝ և ամբար_
տաւան . դու զմեզ յայսց կենաց յաշ_
խարհէս կարճել համարիս . իսկ այն
որ աշխարհաց Թագաւորն է . Թէպէտ
և մեռանիմք մեք վասն օրինացն . 'ի
կեանս յաւիտենից միւսանգամ ծնն_
դեանն ժամանակի՝ կենաց 'ի կեանս
դարձուցանէ ։ * Յետ սորա զերրորդն 10
ածէին . և զլեզուն խնդրէին . և նա
վաղվաղակի մատուցանէր . և զձեռսն
քաջասիրտ տարածանէր ։ * Զի Թա 12
գաւորն ինքնին իսկ զարմացեալ լի_
նէր վ̃ն պատանւոյն ուշիմ մտացն . և
սրտին քաջութե . զի առ ոչինչ զցաւսն
համարեցաւ ։ * Եւ՛ սա իբրև փոխիւր . 13
չորրորդն 'ի տեղի մատուցեալ՝ 'ի նոյն
տանջանս չարչարէին ։ * Եւ՛ իբրև 14
շունչն վախճանի հասանէր . խօսիլ
սկսաւ այսպէս . մեզ լաւ է . զի փոխիմք
աստի 'ի մարդկանէ . և յուսոյն ակն ու_
նիմք միւսանգամ ծննդեանն յարու_
Թե մեռելոց . քան քեզ 'ի կենդանիս .
զի արդելեալ փակեալ է 'ի քէն յարու
Թի մեռելոց ։ * Յետ սորա զհինգ_ 15
երորդն մատուցին 'ի տանջանս չարչա
րանացն . և իբրև զաչս 'ի վեր եբարձ ,
հայեցաւ ընդ Թագաւորն . սկսաւ խօ
սիլ ընդ նմա՝ և ասէ ։ * Իշխանութի 16
առեալ մարդկան . և դու մարդ մահ
կանացու՝ գործես զինչ և կամիս . բայց
մի 'ի վատութի ինչ և զմեր ազգս հա
տանիցես . կամ լքեալ՝ Թողեալ ինչ
'ի ձեռաց ա̃յ համարիցիս ։ * Նա՛յ՝ մ̃նա 17
դու . տեսցես զզօրութիս մեծամեծս
սքանչելեաց . ո̃պ զքեզ և զազգատոհմն
քո չարչարիցէ ։ * Յետ այսորիկ ածէն 18
զվեցերորդն ։ և իբրև մերձ եղև 'ի մե
ռանիլ՝ ասէ . զի մոլորեալես տարա_
պարտուց . ընդ մեզ այսք անցք՝ որք
անցանեն վ̃ն մերոց մեղաց . զի մեղան_
չեմք առ Ա̃ծ . արժանի զարմանալոյ ։
* Բայց դու մի ակնունիցիս ողջան_ 19
դամ՝ բարեմիտ ապրիլ՝ յԱ̃ծամարտ
մատուցեալ ։ * Եւս առաւել բարեաց 20

յիշատակաց արժանի՝ մայրն սքանչե
լի . որ զայնպիսի զեօթն որդի յիւրմէ
կորուսեալ 'ի միում աւուր ժամանա_
21 կի՝ վ̃ն յուսոյն Ա̃յ ։ * Քաջալերեալ՝
սրտապնդեալ զմի մի 'ի նոցանէ քաջա
լերէր՝ մխիթարէր իւրեանց բարբա_
ռովն . և զկիրտն և զմիտսն իգութե
22 առնապէս վառեալ ։ * Քաջութե յա
ռաջ մատուցեալ՝ ասէր . չգիտեմ ընաւ՝
ո̃պ դուք յարգանդի իմ երևեցայք .
և ոչ ես ինչ զոգիդ կամ զկեանսդ
ձեզ շնորհեցի . ոչ զկերպարանսդ ձեր
զիւրաքանչիւր ես նկարեցի . և զհա
սակդ ձեր ծնեալ և սնուցեալ՝ այսու_
23 հետև ես ինչ ոչ համարեցայց ։ * Այլ
որ աշխարհի արարիչն է . որ ստեղծ
զծնունդս մարդկան . զկեանսդ և զո
գիսդ 'ի գալստեան իւրում իւրով ո_
24 ղորմութե 'ի ձեզ դարձուսցէ ։ * Ան_
տիոքոս Թէպէտ և արհամարհեալ
զինքն համարեցաւ 'ի բարբառոյ նա_
խատանացն . սակայն մինչ դեռ ողջին
կրտսերոյ մանկանն առ իւր կային .
սկսաւ ոչ միայն բանիւք մխիթարու
մատուցանել . այլ երդմամբ հաստա
տէր . 'ի մեծութիս աճագութե հա_
սուցանել . երանելի առնել յաշխար_
հի . միայն Թէ 'ի նախնեացն օրինաց
փոփոխեսցի . գործ 'ի ձեռն տալ՝ և բա
րեկամ անուանիլ Թագաւորաց ։
25 * Իբրև ետես՝ եթէ ամենևին պատա
նին 'ի բանս Թագաւորին ոչ խոտորե
ցաւ , կոչեաց Թագաւորն զմայրն . ա_
ղաչէր լինել պատանւոյն կենաց խոր_
26 հրդական՝ զի փրկեսցի ։ * Իբրև կարի
շատ ստիպեաց . յանձնէառ խօսիլ ընդ
27 որդւոյն . խոնարհեցաւ 'ի նա ։ * Սկսաւ
ծաղր առնել զհպարտ զամբարտաւան
Թագաւորն . և ասէ ։ ողորմեա՛ց ինձ
որդեակ իմ . յո՛ւշ լիցի քեզ՝ զի կրեցի
զքեզ զինն ամիս յարգանդի . և սնու
ցի զերիս ամս 'ի դիրկս ստեամբք . և
հասուցի զքեզ յայդ չափ մեծութե հա
28 սակի ։ * Արդ աղաչեմ զքեզ . հայես_
ցիս դու յերկինս և յերկիր . և որ 'ի նո
արարածք իցեն . յո՛ւշ լիցի քեզ՝ զի
յոչնչէ արար զնոսա Ա̃ծ . սոյնպէս և
ազգք մարդկան ստեղծան 'ի նմանէ ։
29 * Մի՛ զարհուրիր դու 'ի չարաշուք
դահճէ այտի . այլ եղբարցն արժանի
եղեալ՝ ընտրեալ զմահ քան զկեանս
աշխարհի . զի ընդ այն եղբարսն ընկա
լայց զքեզ 'ի ձեռս ողորմութե մեծին
30 Ա̃յ ։ * Մինչ դեռ մայրն զայն մխի
Թարութիս մատուցանէր՝ իմիտս հաս
տատունս . սկսաւ խօսիլ պատանեակն՝
և ասէ . ո՞ւմ կայք . զի՞ յապաղէք ։ չեմ
ինչ լսելոց հրամանի Թագաւորիդ .

այլ հրամանաց հնազանդեալ եմ օրինաց հարցն մերոց • որք տուեալ 'ի ձեռն Մովսիսի: 31 * Բայց դու՝ որ զամենայն չարիս խորամանկեցեր 'ի վերայ որդւոցդ եբրայեցւոց, ոչ ապրեսցիս 'ի ձեռաց Այ: 32 * Զի եթէ առ խրատու պատուհասի զայս վն մեղաց մերոց կրեմք: 33 * Կենդանի Տր մեր, առ փոքր մի ինչ բարկացեալ իցէ • դարձեալ հաշտեսցի ողորմութբ ընդ ծառայս իւր: 34 * Բայց դու անօրէն • ապստամբ • պիղծ • վատ արանց • զի զուր հպարտանաս յուսովք քո սնոտւով 'ի վերայ ծառայից նորա: 35 * Սակայն չես ինչ ապրելոց յամենագէտ յամենակալ դատաստանացն Այ: 36 * Զի այժմիկ մեր եղբարքս սակաւ ինչ ցաւոց համբերեալ վն կենացն յաւիտենից՝ 'ի վերայ ուխտի կտակարանացն Այ • անկեալ կան մինհու տարածեալ: 37 * Բայց ես հաւասար եղբարցն իմոց զշունչ և զմարմին մատնեալ պատրաստեալ ունիմ 'ի վերայ հարցն օրինաց • յուսացեալ կարդամ առ Ած • զքաւութիւն ազգին ամի գտանել • և զքեզ մեծամեծ տանջանօք հեծութբ խոստովանել • զի նա միայն է Ած • և այլ ոք չիք: 38 * Ինև՝ և եղբարբքն իմովք զամ զնիւթեալ սրտմտութի բարկութեն ջնջել՝ և 'ի բաց անցուցանել: 39 * Յայնչափ քաջութեն սրտի մանկանցն եօթանեցունց՝ սրտաբեկ լինէր Թագաւորն • առաւել 'ի վերայ կրտսերոյն դառնապէս տանջանս մատուցանէին: 40 * Սակայն և սա անարատութբ և սրբութբ յուսացեալ 'ի Տր՝ մեկնեցաւ յաշխարհէ: 41 * Զհետ որդւոցն և մայրն երանելի 'ի նոյն օրէնս կատարեցաւ: 42 * Այն որինչ վասն հարցմանց զոհիցն՝ և վն անհնարին տանջանացն՝ ցայս վայր ցուցեալ լիցի:

## ԳԼ: Ը:

1 Բայց յուդա մակաբէ՝ և որք ընդ նմայն էին • սատ անդ գաղտագողացեալ մտանէին 'ի գեօղս՝ 'ի քաղաքս՝ յագարակս • յինքն արկանէին զազգատոհմն • և նոճաձեր զհրէայսն • որք կացեալ էին հաստատութբ յուխտին իւրեանց • գունդ լինէին • յաւելուին • բազմանային • լինէին իբրև վեցհազար այր: 2 * Կարդային առ Տր• այց առնել՝ հայիլ 'ի ժողովուրդ անդր՝ որ կոխան եղև 'ի հեթանոսաց • գթալ 'ի վերայ տաճարին՝ որ յամպարշտաց ձեռացն պղծեցաւ: 3 * Ողորմիլ և 'ի վերայ քաղաքին • որ յապականութի և 'ի սատակումն յատակացն հաւուցանելոյն էր • և հայիլ 'ի գոչումն արեանցն: 4 * Յիշել զանմեղ մանկանցն կորուստ տարապարտուց • ածել զմտաւ զհայհոյանս անուանն սրբոյ: 5 * Իբրև կազմէր՝ լինէր զօրաժողով մակաբէ • դիմակալ ինչ ոչ լինէին նմա հեթանոսքն • զի սրտմտութի բարկութե մեծութեցն Ածութե յողորմութի դարձաւ: 6 * Հասանէր 'ի վերայ գեղի և քաղաքաց • հրձիգ առնէր զամուր ամուր տեղիս Թշնամեաց: անդրէն նուաճէր՝ դարձուցանէր զըմբռնեալսն Թշնամեացն • մեծամեծ սաստիկ հարուածս 'ի վերայ Թշնամեացն հասուցանէր: 7 * Մանաւանդ զգիշերն և իւր օգնական գործակից գտանէր • և համբաւ քաջութե ընդ ամ կողմանս ընթանայր: 8 * Իբրև զայն տեսանէր փիլիպպոս • զի գամ քան զգամ իրք առնն յառաջադէմ յաջողէին • արքունի հրովարտակօք առ պտողոմէոս սպարապետ ստորին ասորւոց և տաճկաստանի՝ հրեշտակս առնէր • օգնական 'ի Թիկունս զօրս 'ի ձեռն հասուցանել: 9 * Նա վաղվաղակի իբրև առնոյր զհրովարտակն՝ զնիկանորայ ըզպատրոկղեանց զառաջին սիրելի յաւագաց իւրոց • 'ի ձեռն գումարէր ոչ ինչ պակաս քան զքսան հազար • առ հասարակ բառնալ 'ի միջոյ՝ և ջնջել զազգն հրէից • յանդիմանեաց նմա և զգորգիս սպարապետ՝ զայր քաջ իրաց պատերազմի տեղեակ ամի: 10 * Ընդ մուտն՝ յանձն էառ նիկանոր զհարկն առաջին • զոր տայն հռոմայեցւոց հարիւր քանքար՝ 'ի հրէից գերութե 11 անտի լնուլ: * Ընդ հրաման տայր շուրջ զծովեզերօքն • կոչէր զվաճառականս մարդագին՝ 'ի հրէաստան • խոստանայր իննսուն մարդ տալ նոցա 'ի քանքար մի • յայն ինչ ոչ հայէր • որ երկնից դատաստանն յամենակալէ կանխեալ պատրաստեալ կայ 'ի վերայ նորա: 12 * Յուդայի՝ էին ոմանք, որք գուշակ լինէին վասն նիկանորայ արշաւանին: 13 * Որքա՝ առ վատասրտիլ իւրեանց՝ այսր անդր խուսափէին: 14 * Եւ որինչ իւրեանց մնացեալ էր, վաճառէին • և առ հասարակ զՏր աղենակալ աղաչէին • ապրիլ յանօրէն յանարժան ձեռացն նիկանորայ • որ մինչ չև տեսեալ էր նորա • ընդ վաճառականս՝ անձանց նոցա զգին հատանէր: 15 * Եւ կարդ եթէ ոչ վն նոցա • բայց սակայն վն ընդ հարսն ուխտիցն և կտակարանացն • և վասն մեծի և սրբոյ անուան իւրոյ փրկէր զնս 'ի նմանէ: 16 * Զօրաժողով լինէր մակաբէ, որք զի ուրեք էին, արամբք իբրև վեցհազարօք•

րոք. մխիթարէր զնոսա՝ զի մի՛ պակուցեն յայնչափ զօրաց բազմութենէ. և մի՛ վհատեսցին զուր տարապարտուց ՚ի վերայ եկելոց կուտելոց բազմութեան հեթանոսաց գնդին. այլ կալ՝ և մարտնչիլ քաջութեամբ։ *17 Նախանձ ՚ի մտի դնել սրբութեան տեղւոյն զկատարեալ անարգանս. և զհարեալ քաղաքին դեռութեան զչարչարանս. զնախնեաց սրբութեան. և զվարատիլ օրինացն։ *18 Նոքա ասէ. ՚ի զէնս յուսացեալ քեն՝ և ՚ի զօրութիւնս իւրեանց. մեք յամենակալն Աստուած. որ կարող է զայնոսիկ. որք զմեզ յաջան դնեն, և զաշխարհս ամենայն ՚ի մի շունչ ոգւոյ զօրութեան սատակել։ *19 Նա օգնաւ յուշ առնել զմիոյ միոյ զառաջնոց զքաջութիւնս. և զօգնականութիւնս. որք եղեալք էին ՚ի Տեառնէ։ Միչեցէք զսենեքերիմ. և զերկոտասան բիւրուն սատակումն միանգամայն։ *20 Յուշ լիցի ձեզ պատերազմին հռոմայեցւոց ընդ գաղատացիս. զի ամենեքեան առ հասարակ ՚ի գործ անդր հասեալ էին երկոտասան բիւրու. սոքա ելին վեցհազարաւ. առ հասարակ ՚ի միում ժամանակի. զերկոտասան բիւրն առ հասարակ կոտորեցին՝ օգնականութեամբք լցեալք բարձրելոյն։ *21 Նա այսու մխիթար քաջալեր բանիւ վառէր՝ պատրաստէր զնոսա ՚ի վերայ օրինացն և աշխարհին իւրեանց՝ մեռանել մարտնչել՝ համարձակ մեռանիլ։ *22 Յերիս գունդս զզօրսն բաժանէր. երկոցունց դնդացն զերկոսին զեղբարսն զշմաւոն և զյովսէփ զօրավար կացուցանէր։

*23 Դարձեալ առ քաջալերութեան զօրացն՝ բերեալ եղբայ զԳիրս մատեանս՝ առաջի ընթեռնոյր. իւրաքանչիւր զօրացն յանուն Տեառն նշանս բաշխէր. և առաջնոյ գնդին ինքնին զօրագլուխ պատրաստեալ յարձակիւր՝ ՚ի դիմի հարկանէր նիկանորայ։ *24 Իբրև օգնականութեամբ յամենակալէ նոցա ՚ի վերայ իջանէր. հատանէին՝ հարկանէին ՚ի զօրացն անտի ՚ի թշնամեաց. աւելի քան զինն հազար սպառազէն՝ յառաջ նում յարձակիլ անդ՝ պակաս առնէին. և զայլսն խոցս՝ և խեղս՝ և վիրաւորս առնէին. և շուրջ զամանակաւն պահ արկանէին։ *25 Նա զինչսն և զգանձսն մարդադին վաճառականացն յիւրեանց առնուին. և զմնացեալ զօրսն նիկանորայ առաջի իւրեանց փախստական տանէին. մինչ օրն տարաժամիւր։ *26 Իբրև ժամ աւուրն ՚ի տարաժամիլ անկանիւր. և այսրէն վաղվաղակի տագնապաւ դառնային. և ոչ ընդէր կար հալածէին զնոսա. զի ՚ի վաղիւ

27 անդր շաբաթ էր. *Ապա հասեալ այսրէն ունէին զճակատուն տեղի. զէնս քաղէին յանկելոցն. դիակերծ առնէին զվիրաւորսն. և ինքեանք շաբաթուն պատրաստէին՝ օրհնէին՝ խոստովան լինէին՝ և փառաւոր առնէին զՏէր. զի փրկեաց զնոսա ՚ի նոցանէ յաւուր յայնմիկ. զայն օր ողորմութեան 28 հատէին՝ և նշան յաղթութեան։ *Յետ շաբաթուն՝ նեղելոց՝ և այրեաց՝ և որբոց մասն առնէին յաւարէ անտի. և զայս ինքեանք ընդ բաժինս աւարին 29 խառնէին. *Իբրև զայս գործեցին. առհասարակ աղօթս անկեալ մատուցանէին. առ ողորմածն աղաչէին՝ մինչ ՚ի վախճան հաշտ լինիլ ընդ ծառայս իւր։ 30 *Տիմոթէոս իւր. և բազում դէս յոր գործ հասեալ էին. հասանէին. բախէին. և հարկանէին ՚ի նոցանէ աւելի քան զերկուս բիւրս. ամուրս բազումս և զբարձունս քաջութեամբ առնէին. բազում գանձս ընչից ստացուածոց նոցա յաւարի տանէին. բաժանակիցս իւրեանց զտնանկս և զորբս և զծերս աւարի իւրեանց առնէին։ 31 *Զէնս սպանելոցն քաղէին. ՚ի պէտս տեղիս թողուին. և ինքեանք աւարաւն յԵրուսաղէմ առ նահապետ ազգացն 32 դային։ *Ընդ սպանեալ լինէր նոցա զՏիմոթէոս. որ բազում չարչարանս ՚ի վերայ ազգին հրէից հասուցանէր։ 33 *Ժողովեցին զմարդիկ գաւառացն. որ ուրախութեան առնէին. նշան յաղթութեան կանգնէին. այրէին զկալիսթինէս փախստեայ՝ և որք զնովաւ էին. որոց զդրունս լուցեալ էր՝ կենդանւոյն 34 այրէին։ *Նա յամ կողմանց թշուառացեալ նիկանոր. որ զհազար վաճառականս ՚ի մարդադին ածէր 35 որդւոց հրէիցն։ *Մեծաւ տառապանօք թշուառութեամբ անկեալ ՚ի փառացն հանդերձէ՝ հրամանաւ Տեառն. ձգեալ ընդ մուրօղս՝ անկեալ. մեծ սուգ առեալ ամենայն զօրացն կորստեան. փախստեայ կորացեալ ՚ի քաղաքն անտիոքացւոց 36 անկանէր։ *Նա որ հռոմայեցւոց խոստանայր զհարկն յԵրուսաղեմացւոց գերութեամբ անտի լնուլ. ինքն նովին բերանով պատմէր. եթէ յայտնի Աստուած է նոցա օգնական. վասն այսորիկ ողջանդամք և առանց խոցոտելոյ ՚ի պատերազմէ ելանէին. զի հաստատութեամբ ուրեմն պահէին զօրէնս՝ որ ՚ի նմանէ կարգեալ է։

## ԳԼ. Թ.

1 Ընդ այն ժամանակս դէպ եղև դառնալ անտիոքայ մեծին քորանոք ՚ի կողմանց պարսից. քանզի էր երթեալ

նա

14 Թագ. 19.35. Տոբ. 1.21. Սիրաք 48.24. Եսայի 37.36. 1 Մակ. 7.41.

զմեծութիւն զօրութեան քո․ զի պատրաստեալ զհետ հեծանէր ժողովրդեանն քո բազում զօրօք՝ կառօք և երիվարօք․ ընկլուզեր զնա 'ի ծովն կարմիր ։

5 * Նայց զախոսին՝ որք հաւատացին 'ի քեզ․ 'ի վերայ ամ արարածոց զօրացեալս պահեցեր․ որք իբրև տեսին զգործս ձեռաց քոց, օրհնեցին զքեզ Տէր ամենակալ․ դու Թագաւոր սատեղծեր զանքննին զերկինս ամենայն․ և ընտրեցեր քեզ զքաղաքս զայս․ և սրբեցեր զտեղիս զայս յանուն քո քեզ․ որ աննիազդ ես յամենայնէ ։

6 * Դու ժողովեցեր զսա 'ի փառս մեծութեան․ և 'ի պատիւ անուան քոյ․ դու սիրեցեր զտաճարս զայս․ և խոստացար դու տանս իսրայելի․ բանք ինչ անդէպ.ք՝ որք հասանիցեն․ և կամ նեղութիւնք՝ որք գայցեն 'ի վերայ․ գալ հասանել յայս տեղի սրբութեան խնդրուածովք լսելի առնել զաղօթս մեր․ արդ հաւատարիմ է բանդ քո՝ և ճշմարիտ ։

7 * Բանզի բազում անգամ յորժամ նեղեցան հարքն մեր՝ օգնեցեր դու նոցա 'ի խոնարհութեան իւրեանց․ և փրկեցեր դու զնոսա 'ի մեծամեծաց չարեաց իւրեանց․ աւասիկ և մեք սուրբ Թագաւոր․ վասն մեծամեծ և բազում մեղաց մերոց չարչարեալք՝ հնազանդեալք եմք․ 'ի Թշնամեաց մերոց պարտասեալք և տկարացեալք 'ի տկարութեան մերում․ և յաւուրս 'ի նեղութեանս յայսմիկ՝ պիղծս՝ հպարտս՝ և ամբարտաւանս՝ սպրդի հնարել 'ի ներքս անկանել․ Թշնամանել զտեղի սրբութեան զանուանի՝ ընդ ամենայն երկիր երևեալ տաճար փառաց անուան քո ։

8 * Թէպէտ և բնակութիւն քո երկնից երկինք են աներևոյթ անձեռնհաս ձեռին մարդոյ․ սակայն վասն զի հաճեցար փառօք քովք ընդ վայելչութեան իսրայելի․ և սրբեցեր զտեղիս զայս․ Թէպէտ և յանցաւորք եմք քեզ․ մի խնդրեր զվրէժն զայն հեթանոսաց ըստ պղծութեան․ զի մի պարծեսցին անօրէնք յիւրեանց հըպարտութեան․ և մի ցնծասցեն յամբարտաւանութեան խօսից իւրեանց․ և ասասցեն․ թէ մեք կոխեցաք զտաճարն սրբութեան․ զոր օրինակ կոխեցին խառնակօխ յատակ.ք մեհենից ։

9 * Ջնջեա՛ զմեղս մեր․ և ցրուեա՛ զամենայն յանցանս մեր․ երևեցո՛ զողորմութիւնս քո ըստ ժամանակիս ըստ այսմիկ․ վաղվաղակի ժամանեսցեն առ մեզ ողորմութիւնք քո․ և տուր օրհնութիւն 'ի բերան կործանելոցս՝ և չարչարելոցս․ և արա՛ ընդ մեզ խաղաղութիւն ։

10 * Իսկ սուրբն՝ որ 'ի սուրբս բնակեալ է․ ամենազօր՝ ամենակալն աստուած լուաւ զօրինաւոր զաղօթս խնդրուածոց ժողովրդեանն ։ այն որ արդէն հպարտութեամբ և ամբարտաւանութեամբ մեծաւ 'ի վերայ նոցա համբարձեալ սաստկացեալ էր․ հարկանէր զնա աստի անտի սաստիկ հարուածովք․ տանէր՝ և շարժէր զնա իբրև զեղէգն 'ի հողմոյ․ և անդէն պգեանէր․ և նա այնպէս անկեալ դնիւր անզգայ՝ ընդարմացեալ՝ անմռունչ՝ անդամալոյծ՝ լուծեալ յամենայն յօդից․ զի սաստիկ և արագ արագ հասանէր 'ի վերայ նորա դատաստանն հպարտութեան ։

11 * Տեսեալ բարեկամքն՝ և որք զնովաւ սպասաւորքն էին․ իբրև տեսին թէ այնպէս երագ հասանէր 'ի վերայ նորա դատաստանն, զահի հարկանէին․ թէ գուցէ և ոգիքն անդէն սպառիցին․ և վաղվաղակի զնա 'ի ներքուստ արտաքս քարշէին զարհուրեալք 'ի սաստիկ հարուածոց անտի ։

12 * Իբրև ժամք հարուստք 'ի վերայ անցին․ և առն միտք՝ յինքն եկին․ սակայն ոչ եթէ զղջացաւ ինչ 'ի միտս իւր յետ մեծի պատուհասին․ այլ սաստկագոյնս ևս սկսաւ սպառնալ․ հրամայէր չու դարձի առնել ։

13 * Իբրև եկն՝ եհաս յերկիրն եգիպտացւոց․ և զչարութիւնն յանձն իւր ևս քանզևս աճեցուցանէր տաճարակից ընկերովք իւրովք՝ մեկնեցելովք յամենայն իրաւանց․ և ոչ միայն անթիւ աղտեղութեամբքն չյագեցաւ․ և յանչափ յանդգնութիւնս հասանէր, զի հայհոյութեամբ զտեղին նոյր․ զի բազումք 'ի բարեկամաց անտի իբրև ընդ Թագաւորն նայէին․ և ինքեանք զհետ երթային կամաց նորա ։

14 * Դիր առնէր՝ և 'ի հրապարակս տայր տարածանել՝ և բամբասանս՝ և հայհոյութիւնս․ և զարաշիւն շուրջ 'ի վերայ աշտարակացն արձանս հրամայէր կանգնել․ և գիր հաստատել․ հրաման տալ սաստկութեամբ ։ ապա թէ իցէ ոք այն․ դտցի որ ոչ զոհիցէ․ մի իշխել ամենևին մտանել 'ի տաճար անդր․ և զամ ազգն հրէից յաշխարհագիր խառնել 'ի կարգս հարկի ծառայութեան օրինի․ և որք սակաւ մի խեռեալ ընդդէմ դառնայցեն․ պատուհաս մահու 'ի վերայ նոցա․ և

և զոր ոչն սպանանիցեն, դրոշմեալս հրով նշանաւորս որմզդական դիցն տօնի ոստս 'ի ձեռս սպակաւորս կաքաւեցուցանել :

15 * Այլ զի մի ամենեցուն իբրև զԹշնամի երևեսցի, զայս ևս հրամայեաց գրել 'ի հրովարտակի անդ. ապա եթէ իցեն ոմանք 'ի նոցանէ. որք յօժարիցին զօրէնս արքունի յանձինս իւրեանց ցուցանել. զնոսա քաղաքակիցս աղեքսանդրացւոց համարել : 16 * Բազումք 'ի նոցանէ ծանծաղամիտք. որք յառաջ իսկ գայթն 'ի գայթին կային յօրէնս առաջինս. դիւրաւ տային զանձինս իւրեանց 'ի ներքս. իբրև մեծի իմն անուն փառաց ժառանգել խորհէին. եթէ մտաց Թագաւորին հնազանդեսցին :

17 * Բազումք 'ի նոցանէ պնդեցան՝ հաստատեցան 'ի սիրտս իւրեանց. և ոչ դրդուեցան յօրինացն իւրեանց սրբութեան. արկին առաջի զգանձս իւրեանց՝ տալ փոխանակ իւրեանց անձանց. զի աներկիւղս զանձինս իւրեանց փրկեսցեն 'ի գրոյ անտի. և յուսով հաստատեսցին օգնականութի գտանել : և որք մեկնէինն 'ի նոցանէ խորշէին՝ գարշէին. և զնոսա պիղծս համարէին. որոշէին՝ զատանէին յօրինացն հայրենեաց. յաղնաւութէ անտի սրբութեան զնոսա 'ի բաց մերժէին :

## ԳԼ. Գ.

1 Իբրև 'ի վերայ հասանէր անօրէնն խորհրդոց նոցա. յայնչափ սրտմտութի բարկութեան բրդէր, մինչ հրաման տայր՝ ոչ միայն 'ի վերայ երուսաղէմացւոցն ածել զբարկութիւն. այլ ընդ ամենայն երկիրն ուր բնակեալ իցեն որդիքն եբրայեցւոց. հրաման տայր ածել՝ ժողովել՝ կուտել զնոսա. և չարաչար մահու սպառել զկեանս նոցա յերկրէ :

2 * Իբրև այս հրաման դառնութեան սաստիկ ելանէր յանօրինէն. չարԹուէր նոց նեղութի փոփոխելոյ օրինացն քան զմահուն դառնութի :

3 * Իսկ որդիքն հեբրայեցւոց զօրէնսն միամտութեամբ ընդ արքային արդար պահէին. և 'ի Տէր Աստուած իւրեանց հաստատուն կային. և զօրէնսն տուեալս հաստատուն պահէին. մեկնութիւն առնէին յապստամբ անօրէնութենէ. վասն այսորիկ շատից յաչաց ելանէին :

4 * Բայց վասն հաստատութեան զոր ծոյն պատուն օրինացն՝ առաջի ամենայն մարդկան փառաւորեալ կային. վասն այսորիկ զարգասիան բարեաց ազգին՝ այլազգիքն 'ի համար ոչ բերէին. բայց զպաշտօնն՝ և զօրէնսն կերակրոյն 'ի հակառակութի ապստամբութեան տանէին, և ասէին. առ հասարակ արքայի և զօրացն արքունի Թշնամի է ազգս այս. և այսպիսի բանիւք հայհոյութեան չնաս արքունի և պատուհաս մեծ 'ի վերայ հասուցեալ դնէին :

5 * Իսկ որք 'ի քաղաքի անդ հեթանոսք էին. իբրև տեսին զյանկարծակի զխռովութիւն մարդկան. և զայսչափ հալածանս յանկարծակի հասեալ 'ի վերայ. օգնել ինչ ոչ կարէին՝ և ոչ ընդդէմ դառնալ հրամանացն արքունի : 6 * Բայց սակայն արդահատէին՝ մխիթարէին՝ քաջալերէին՝ և խնդրէին անցուցանել վաղվաղակի զժամն բարկութեան. և ասէին. ոչ Թողու Տէր Ած իւրեանց զայդպիսի դունդ տարապարտուց կորուսանել. և որ այլոք՝ որ բարեկամք՝ և մերձաւորք՝ և վաճառակիցք էին. լռելեայն ուխտ դնէին օգնական լինիլ. որչափ ձեռնհաս լինէին :

7 * Բայց անօրէնն այնչափ բարձրացեալ էր 'ի հպարտութեան առ ժամանակ մնդր. և ամենևին ոչ հայէր 'ի զօրութի մեծին Այ. բայց այսպէս ածէր նա զմտաւ. եթէ մշտնջենական իցէ իւրոյ խորհրդոցն իշխանութիւն : արդ հրովարտակս առնէր ընդ ամենայն աշխարհ զօրինակ զայս : 8 * Արքայ յանտիոքոսէ կողմանցդ եգիպտացւոց 'ի տեղիս տեղիս. առ սպարապետս՝ և առ զօրավարս՝ և առ զօրս՝ ողջոյն. ողջ լիջիք. և ես ինձէն իսկ ողջ եմ ամենայն իրօք. զօրօք. տէրութեան օրինօք : 9 * Ձեր ինքնին լուեալ իցէ վասն առնուձիոյ Ճանապարհին. որպիսի գնդաւ մտի ես դիցն օգնականութբ. զայն Ճանապարհ խորհեցայ. ոչ զօրութեան բռնութեամբ. և ոչ 'ի տեգս նիզակաց. և ոչ 'ի հաստապինդ բռնութեան աղեղանց. այլ հեզութեամբ և խոնարհութեամբ. մարդասէր խորհրդովք՝ իբրև գայե կաւար սնուցանել զամենայն կողմանս ստորին ասորւոց՝ և տաճկաստանի. ընդ ամենայնի ամենայնիւ բարեաւ եղէ : 10 * Մեծապատիւ մեծապարգև արարաք զամենայն կողմանս քաղաքացն. եկաք՝ իջաք և 'ի քաղաքն երուսաղէմացւոց. եկաք՝ կա_

կամեցաք մտանել 'ի տաճար անդր . 'ի չարագործաց վայր անդր . որ՝ ոչն կամին կասիլ երբէք 'ի խորամանկութենէ չարեացն իւրեանց ։

11 * Նոքա վեր'ի վերոյ բանիւք խոնդային զմեր 'ի նոսա հաւանիլ . բայց արդեամբք խորամանկեցին չմերձենալ 'ի մեզ . և ոչ զմեզ 'ի տաճար անդր մերձեցուցին . և ոչ զերևելի դաշնամունս պատարագաց մերոց 'ի տաճար անդր իւրեանց ընկալան . 'ի հպարտութենէ ամբարտաւանութեան յեցեալ . յայն որ 'ի հնոց ժամանակաց հետէ ունէին . արգելլին զմեզ 'ի ներքս մտանելոյ ։ կարօտացան . պակասեցան 'ի մերմէ բարեաց . 'ի մարդասէր զօրութենէ՝ զոր ունիմք առ ամենայն մարդիկ ։ ('ի վերոյ)

12 * Եւ զիւրեանց զանհնարին միայն թշնամութիւն զոր ունէին ընդ մեզ , յայտնապէս կամեցան ցուցանել . իբրև միայն 'ի մէջ ամենայն ազգաց կամեցան կնճմանալ . զեղանիլ , տիրել՝ թագաւորել՝ հպարտանալ՝ ամբարտաւանիլ՝ յոխնկալ՝ բարձրապարանոց երևիլ 'ի վերայ երախտաւորաց իւրեանց ։ 13 * Մեք իբրև կամեցաք ըստ նոցա անմտութեանն զմեր միտս զնստուցանել . մեծաւ յաղթութեամբ դարձաք անտի 'ի կողմանս երկրին եգիպտացւոց . զամենայն ազգս և ազինս մարդասէր հեզութեամբ խնամով որպէս պարտ և պատշաճ էր 'ի մերում նուաճեցաք ։

14 * Եւ զազգատոհմս նոցա առանց ոխս 'ի մտի ունելոյ . վասն բազմապատիկ յանդգնութեան ժպրհութեան նոցա . սակայն հրամայեցաք աղեքսանդրացւոց քաղաքակից արժանիս առնել 'ի համարի ։ 15 * Նոքա ևս վատթար յետսամիտ խորհրդովք՝ և տնկակիցք խորամանկութեամբ զայն բարիս յանձանց մերժեցին . և քանզի հանապազ զմիտս իւրեանց 'ի չարին հաւանութեան ունէին . ոչ միայն 'ի բաց մերժեցին զերևելի պատիւ մեծարանաց ընկերութեան . այլ գարշին . և անարգեն . և պիղծ համարին բանիւք և լռութեամբ . և զայնս ևս սակաւս որք 'ի մեզ գթովքն նուաճեցան՝ խոտեն . և անարգեն . և անկեալ կեանս շտապ տագնապաւ 'ի վերայ հաւացանեն կարճ 'ի կարճոյ վաղվաղակի . 'ի կործանումն իրաց նոցա խոտանան անցուցանել ։

16 * Յայսմ ամենայնէ հաստատեցաք նոցա ընդ մեզ թշնամութիւն . և խորհուրդ ևս 'ի մտի եդաք . եթէ գուցէ առ այսպիսի խորամանկ բարոյիւք նոցա յանկարծակի խռովութիւն ինչ 'ի մեր վերայ հասանիցէ . նոքա ըստ իւրեանց անօրէնութեանն զթիկունս հաստ առնիցեն . մատընտու 'ի ներքուստ արտաքս առ թշնամիս անդր գտանիցին . հրաման տուաք վաղվաղակի իբրև 'ի ձեռն առնուցուք զայդ մեր առ ձեզ հրովարտակս . զմոլեկան չարագործդ կնաւ և մանկամբ հանդերձ մեծաւ թշնամանաւ և աշխատութեամբ . ոտիւք և ձեռովք և պարանոցօք կապելովք . շուրջանակի պատեալք պաշարեալք պահպանօք . ահագին պատուհասիւք առ մեզ արձակել ։ 17 * Զի իբրև նոքա խորամանկս ըստ անօրէն չարագործութեան . պատիժ և պատուհաս ըստ իւրեանց արժանի գործոցն կրեսցեն . խաղաղագոյն և դիւրին մերոց իրաց կազմած հաստատութեան պատրաստեսցի . ապա թէ գտցի . որ թաքուցէ ոք 'ի նոցանէ . այր մի՝ կամ կին մի . կամ տղայ մանուկ մի . յանցեալ ծերութենէ մինչև 'ի դիեցիկն 'ի դրկի , չարաչար տանջանօք պատուհասամահու զնա տոհմաւ հարցեն ։

18 * Ապա թէ ոք գտցի . որ զզօղեալն թաքուցեալն գուշակել . ինչքն և ստացուածքն գուշակողացն լիցին . և յարքունի գանձէն նմա պարգև լիցի . և ազատութիւն պսակաւ պատուեալ 'ի հրապարակ եկեսցէ կոչեցեալ ։ (գոյ. ինչք)

19 * Եւ ամենայն տեղի՝ որ երևեսցի 'ի նմա՝ 'ի նոցանէ ոք զօղեալ կամ թաքուցեալ . աւեր՝ հրձիգ՝ և անպատ լիցի . և ամենայն ազգի մարդկան յամենայն պէտս անպէտ կացցէ մինչև յաւիտեանս ժամանակաց ։

## ԳԼ. Գ.

1 Եւ հրովարտակն արքունի օրինակ այս գրեցաւ . բայց ընդ ամենայն տեղիս՝ ուր և հասանէր հրաման հրովարտակին . դաւառակոյտ քաղաքաժողով ուրախութիւն լինէր հեթանոսացն մեծաւ ցնծութեամբ և ուրախութեամբ . զառադաստեալ խորամանկ նենգութեամբ զոխութիւն խորհրդոցն գաղտնեաց յայտնութեան համարձակութեամբ զթշնամութիւնն ցուցանէին ։

2 * Եւ քաջայն սուգ անհնարին՝ և գեր արտօսրալից գոչմամբ եռանդն 'ի վերայ հասեալ զխիրտս ճմլէր . յանկարծակի հրաման դառնութեանն որ 'ի սատակումն զամենեսեան առ հասարակ հրամայէր ։ (և հրէից առնէ)

* Որան_

3 *Քանզի զինչ օրէնք՝ կամ քաղաք. կամ բնակութիւն բնաւ տեղի մարդկան, կամ որ անցք փողոցաց ընդ ամենայն քաղաքս գուժիւ աղաղակաւ և կոծով 'ի վերայ նոցա չէին լցեալ ճչելով:

4 *Ի այնպէս մեծաւ սաստիկ դառնութեամբ և անողորմ հրամանաւ զազգն ընտրեալ 'ի քաղաքաց քաղաքաց ժողովեալ յուղարկէին 'ի ձեռն զօրավարաց քաղաքացն և դաւառացն. զի արտաքոյ բնակութեան 'ի տալ պայման հրամանին տարապարտուց մեռանիլ: և յայնչափ աղէտ տարակուսի էր 'ի վերայ անհնարին վշտացն. մինչև սիրտն ոխակալ՝ ակն նախանձալից՝ վասն հաւասար գթոյն յանողորմ տեսիլ չարչարանաց մարդկան արտասուօք քամէին, զյանկարծակի զթշուառութեան ճանապարհօքն: 5 *Ի երթային՝ տանէին բազմութիւն ծերակոյտ ալեացն հնացելոց հիւանդաքայլ ոտիւք, տարակուսեալ տկարութեամբ 'ի հնութեան ժամանակի: իսկ որ արդեւս նորոգ ամուսնութիւնք 'ի միմեանս հասեալ թերալից ուրախութեամբ նորասէր առագաստիցն չարաչար գուժիւ մերկացեալք ուղւոյ լինէին: 6 *Եւ ամրածածուկ քօղածիգ ծնդասէր հարսունք՝ վարսս մերկացուցեալ՝ գոյժ առեալ՝ զիւղաթորմ ցցունսն. յանդգնեալ՝ հոլանեալ՝ հող 'ի գլուխ տանէին: փոխանակ երգոցն ուրախութե՛՝ ձայնակից ընկերօք անընդել աշխատութե՛ տառապանօք. հերարձակք՝ ցոեալք՝ և կապեալք՝ ընդ հրապարակսն մինչև 'ի նաւացն նաւահանգիստ բռնութե՛ քարշեցեալք երթային: 7 *Եւ նոցունց ամուսինքն՝ տոռն ընդ անձն փոխանակ երիտասարդութեան ցնծութեանն՝ ձեռակապօք խառնաձիգք 'ի մունչիւն լալոյ. վասն հասեալ ժամանակին անդէն առ ոտս իւրեանց զօրհաս մահուն դէմ յանդիման առ 'ի դժոխս նկարէին: 8 *Եւ այսպէս զամենեսին իբրև զգազանս ինչ 'ի վայրէ երկաթակապս ածեալս. ընդ խելս նաւացն զպարանոցսն կապէին. և նովին շղթայիւք բևեռէին. կխոցն զոտիցն և զձեռացն կապելոյն առեալ ընդ վերնակողմն՝ տախտակամած նաւին բևեռէին. յամենայն կողմանց թմբրեալք անձին ինչ հրամայել՝ յերթալ նաւացն նենգութեամբ ինչ մի արասցեն: 9 *Իբրև այնպէս զամենեսին զնոսա 'ի նաւ անդր ամբարձեալ տանէին. և ընդ հողմոյն աջողել ըստ հրամանի թագաւորին 'ի տեղի հասուցանէին. և հրաման ետուն արտաքոյ քաղաքին յասպարիսի անդ՝ յընդարձակ տեղւոջ՝ յաշխարհակոյտ վայրի՝ վասն խայտառակութեան ազգին. զի ամենեցուն համարձակ իցէ տեսանել. զորս յայնկոյս յայսկոյս շահատակեն. զի առաջին քինու վրէժն զամենեցունց ընդ այն հանէին.

10 *Իբրև այս ամենայն լինէր. դարձեալ լու լինէր, թէ ազգակիցքն դաղտուկ ելանէին արտասուակցորդ լինիլ. վասն յանկարծակի թշուառութեանն 'ի վերայ ազգին հասելոյ. իբրև այն ազդ լինէր, 'ի սրտմտութե՛ և բարկութեան բրդիւր թագաւորն. հրաման տայր այնոցիկ. որք 'ի ներքս 'ի քաղաքի անդ էին. ածել՝ խառնել ընդ նոսա. և առ հասարակ 'ի նմին պատժի պատուհասի արժանի առնել զամենեսեան. և ընդ միով աշխարհամար գրով զազգատոհմն ամենայն յանուանէ գրել:

11 *Ի առ սակաւ մի յառաջ յայտնելոյ գործոյն՝ վասն սրտցաւութե՛ պաշտամանն պատուիրեալ էր սաստիկ պատուհասիւք՝ մեծամեծ տանջանօք 'ի միում ժամանակի արագ կորուսանել: 12 *Եւ նոցա գիր համարոյն այսպէս դառնութեան սաստիկ հրամանին սրտցաւութե՛ պնդապէս յարևելից մինչև յարևմուտս անվախճան կատարած յաւուրս քառասուն ձգտիւր: 13 *Առաւել մեծապէս քան զօրէն հանապազորդ՝ թագաւորն լի ցնծութեամբ հրաման տայր մեծի տաճարին կռշնականս նուիրել յամենայն մեծամեծաց՝ մոլորեալ միօք 'ի ճշմարտութենէ. անօրէն և պիղծ բերանովն զանշշունչ զանձայն զանմռունչ կուռսն յարգէր՝ գովէր. և յօրինաւոր սրբութիւնն խօսէր՝ որինչ ոչ էր արժան:

14 *Եւ յետ սակաւ ժամադիր ժամու եկին մատուցին աշխարհամար դպիրքն զգիրն առաջի թագաւորին. սկսան պաղատիլ. և անհնար համարեցան առնել գիր զաշխարհամար հրէիցն: ասէ. ոչ յաղթեմք վասն անչափ բազմութեանն. զի բազումք են՝ ասէ. որք ցրուեցան աստ անդ ընդ աշխարհ՝ անհամար մնացեալք են արտաքոյ այդր գրոյ. (անհամար կան.) և որք 'ի տեղիս տեղիս յապարանս ապարանս 'ի կողմանս երկրին եգիպտացւոց անհամար կան: 15 *Իբրև զայն լսէր թագաւորն. պատուհասակոծ

արձակէր զդպիրսն իբրև զկաշառաբեկս․ իբրև զայն ինչ խելս մեքենայիցն խառնել, զի ապրեցուցանել մարթասցին նոքա զնոսա ։

16 * Նոքա հաստատէին․ և ասէին․ և յայտ յանդիման ցուցանէին զքարտեսն ապականեալ․ և զգրիչսն մաշեալս․ և այս ամենայն լինէր վասն օգնականութե բարձրելոյն․ որ ցուցանէր զգթութի խնամոց 'ի վերայ հեբրայեցւոցն ։

## Գլ․ Ե․

1 Յայնմ ժամանակի կոչէր նա զՀերմոն փղապետ մեծաւ սաստկութբ վառել զփիղսն 'ի վաղիւ անդր․ զի առանց յապաղելոյ պատրաստեսցէ գինեզենս' խնկալիցս' զայրացուցեալս կնդրկաւ' գազանացուցեալս անապականս' 'ի հրապարակ ածեալ թուով իբրև եօթնհարիւր․ (500) ածել պատրաստել յահագին պատուհաս ազգին հեբրայեցւոց ։

2 * Այս թագաւորն զայս հրաման տայր փղապետին․ և ինքն յուրախութիւն դառնայր բազում զօրօք․ բարեկամօք մեծամեծ աւագանւով․ որք առաւել ևս թշնամութբ էին ընդ ազգին հեբրայեցւոց քան զթագաւորն ։

3 * Իսկ փղապետն իբրև առնոյր զհրամանն սաստկութեան, կատարէր․ և 'ի ժամ' անդր զփիղսն պատրաստէր․ և այլ սպասաւորքն ելանէին' կապէին զտառապելոցն զոտս և զձեռսն․ և զայլ պահ գիշերապահ շուրջ զնոքօք զգուշութեամբ բիւրազգի ածէին 'ի միտս իւրեանց' համարեալ ընդ այգն ընդ առաւօտն վախճան սատակման ածել 'ի վերայ ազգին տեսանէին ։

4 * Իսկ հրեայքն յամենայն կողմանց զանձինս իւրեանց անզօրս և առանց օգնականութեան, գէշ անկեալ հեթանոսացն համարէին․ զամենակալն Ա̃ծ․ և զամենայն զօրութեցն զօրացուցիչ, զողորմածն Ա̃ծ անդադար բարբառով արտասուօք կարդային․ անկեալ առ հասարակ աղաչէին․ դարձուցանել' շրջել զխորհուրդն անօրէնութեան' մեծապէս յայտնութբ անցուցանել զօրհասն․ որ անդէն մօտալուտ զոտիւքն և զձեռօքն պատեալ է ։ 5 * Փղապետն զանողորմ զգազանսն' գինեզենս' խնկալիցս զայրացուցեալս' ընդ առաւօտն 'ի դուռն թագաւորին հաստուցանէր ։

6 * Իսկ այն' որ յուխտենից ժամանակաց գեղեցիկ արարածք բարուք բաժին տունջեան և գիշերոյ․ վիճակ ելեալ յերկնաւոր 'ի պարգևատու յառատաձեռն Ա̃յ, ելանէր պարգև մի մասն քնոյ․ զոր առաքէր 'ի վերայ թագաւորին․ և անդէն թանձր և խորխորին․ և քաղցր և անոյշ քնով 'ի զօրութի Տ̃ն կապէր զթագաւորն․ և զնա յանշարժ խորհրդոց անտի խաբեալ' վրիպեալ կացուցանէր ։

7 * Ընդ որդիքն հեբրայեցւոց զժամակալ զմահաբեր զօրհասի զժամանակն զանցուցեալ․ զսուրբն զերկնաւորն զԱ̃ծ օրհնէին․ և դարձեալ անկեալ 'ի վ̃ր երեսաց իւրեանց աղաչէին․ կատարել զպարգևն 'ի մեծազօր բազկէ անտի․ 'ի մէջ հպարտացեալ հեթանոսացն երևեցուցանել ։

8 * Իբրև ընդ մէջ լինէր ժամ տասներորդ․ և սպաս տաճարին ա̃մ պատրաստեալ էր․ և կոչնականք յիւրաքանչիւր չափս յօրինեալ կային․ յանկարծակի խթեաց' ազդ արար․ մերձ 'յանցանել լինիլ ժամն ուրախութե տաճարին․ զայն ժամ ուրախութե զմտաւ ածէր թագաւորն․ և անդրէն բազմեալ վաղվաղակի հրամայէր զկոչնականսն 'ի ներքս կոչել․ սպաս առնել տաճարին' բարձիցն պատրաստութիւն, զայր այր յիւրաքանչիւր գահ հրամայէր մատուցանել ։

9 * Ի ձեռն առեալ զուրախութիւն․ խրախունս առնէր տաճարին․ և զանազան ժամուն ընդ ուրախութիւն զուարթութե անցուցանել․ իբրև յերկարագոյն նուագքն զբանիւքն անկանէին․ կոչեալ զփղապետն ահեղ սաստկութբ դառնապէս պատուհասէր․ ընդէ՞ր' կամ' զմէ՞․ ժամադիր սաստիկ հրամանի զօրահասաւ անցեալ հրեայքն․ և այսօր կեցեալ գտանին ։ 10 * Նա կայր' ցուցանէր զհրամանն արքունի գիշերախառն կատարեալ․ և նոքին կոչնականքն վկայէին բանիցն փղապետին․ ապա թագաւորն զդառնութեանն զգազանութիւնն ցածուցանէր, և ասէր․ երթ դու' քեզ այսօր քնոյ շնորհք կալցին նոքա․ բայց անվրէպ զվաղուն օրն պատրաստեսջիր 'ի նմին գազանութեան զփիղսն 'ի վերայ անօրէն ազգին հրէից սատակման հասուցանելոյ ։

11 * Իբրև զայս ասէր թագաւորն․ և ամենեքեան լի ուրախութբ իբրև ընդ մի բերան զհրամանն գովէին․ յիւրաքանչիւր վանս 'ի միմեանց բաժանեալք․ վասն անդադան ժամուն մեկնէին․ և սակայն այնչափ ոչ տային

քնոյ

քնոյ զանձինս, որչափ զգիտէրն ամե_
նայն զմտաւ ածէին մեքենայել.
զինչ նոր նոր չարչարանս 'ի վերայ
տառապելոցն մարթասցին հասուցա
նել: * Այն ինչ հաւ խօսէր, կանուխ 12
ընդ առաւօտն գաղանացուցեալ՝ զա
ռեալ զգազանսն 'ի գինի և 'ի խունկ՝
ածեալ պատրաստեալ. և ինքն իջեալ
'ի մեծ սրահի անդ ձեռն առեալ շր_
ջիւր. իսկ որք 'ի քաղաքին զօրքն
էին. առ հասարակ եկեալ հեղեալ՝
եկեալ ժողովեալ էին. դէտ ակն ու
նէին թշուառութեան տեսլեանն,
որ ընդ այգ ընդ առաւօտն 'ի վերայ
հրէիցն սպառնացեալ պահիւր:
* Եւ հրեշտակն ժամ 'ի ժամ անցեալ 13
զօրհասաւն. բաղում արտօսր՝ պահոց
պնտութեան. ձայն ողորմ ողբոց.
զձեռս յերկինս բարձեալ՝ զմեծ զա_
մենազօրն Տ̃ծ աղաչէին, միւսան_
գամ այցելու լինիլ. և փրկել զնոսա
յանհնարին յօրհասէն:
* Զի և լինէր արեգական ճառա_ 14
գայթիցն յաշխարհս սփռիլ. և թա
գաւորն յարուցեալ դէտ ակն ունէր
մեծամեծացն. և հասեալ 'ի դուռն
փղապետն՝ աչօք ցուցանէր զպատրաս
տութի փղաց. որպէս վառեալ պատ
րաստեալ և 'ի դուռն հասեալ էր:
* Թագաւորն շնորհակալ լինիւր. և 15
զարմացեալ էր ընդ պատրաստու_
թէն. դարձեալ միւսանգամ անդրէն
զառածանէր. զի՞նչ իրք իցեն վասն
անօրէն ձեռլոյն. դարձեալ զմիտս
դարձուցանէր. պատուհաս 'ի վերայ
փղապետին կապէր. թէ որինչ հրա
մանն տուեալէր՝ զայն ոչ վաղվա_
ղակի 'ի գլուխ հանեալ ցուցանէր:
* Եւ այս ամենայն լինէր 'ի հրամա 16
նէ Տ̃ն ամենակալի. զանհնարին զօր_
հասին պնտութեան խորհուրդսն՝
յապուշ դարձուցանէր: արդ մա_
տուցեալ փղապետն 'ի մեծամեծ յա
ւագանին 'ի վկայութիւն ածէր.
որպէս կանխաւ փիղքն վառեալք և
զօրքն պատրաստեալ. զհրամանն ար
քունի հաստատուն 'ի գլուխ կատա
րեալ ցուցանէր:
* Դարձեալ յայնմ ժամանակի թա 17
գաւորն ընդ մեծաւ բարկութեամբ
լի մեծութեց գթոյն Տ̃ն. զի կամէր
ցրել զխորհուրդս նորա. որ անդէն
իսկ մեծաւ բարկութեամբ՝ սաստ_
կաւ պատուհասիւ հայեցաւ ընդ
փղապետն. սկսաւ խօսիլ՝ և ասէ:
* Որք միանգամ հարք և մարք, կամ 18
որդիք 'ի տեսանել իսկ եկեալ իցեն.
դրեսցին կորուսանել դաղանացդ. և
զքեզ ընդ նոսա փոխանակ մեղացդ
այդոցիկ. որ 'ի սկզբանէ նախնեաց
մինչև 'ի նախնիս անարատ զարդա_
րութիւն և զհաւատ առ մեզ պահեալ
է հեբրայեցւոցդ այդոցիկ. և եթէ
ոչ վասն դայեկատոհմ միաբանութ սի_
րոյն էր. զքաղցր արևդ յաչացդ հա
տանէի. և զքեզ նենգաւոր չարա_
գործ, 'ի միջոյ պակաս առնէի:
19 * Փղապետն այսպէս յանկարծ ժա_
մանակի յեղեղնաւոր պատուհասէն
մազապուրծ եղանէր. և յառաջին 'ի
զուարթութէ անտի զիջեալ տրտ_
մադոյն երեսօք այր ընդ արամբ զինքն
'ի միջոյ անտի 'ի բաց մերժէր. և բա
րեկամքն իւրաքանչիւր գլուխ 'ի վայր
արկեալ՝ զամբոխն ժողովեալ. յիւ_
րաքանչիւր պէտս՝ հրաման տուեալ
20 ցրուէին: * Որդիքն հեբրայեցւոց
իբրև լուան զթագաւորին. զերևե_
լին զՏ̃ր Ած. զթագաւորն թագա_
ւորաց օրհնել սկսան. առաւել իբրև
զայս օգնութիւն 'ի վերայ անձանց
իւրեանց գտին: և անդէն վաղվա_
ղակի թագաւորն հրաման տայր կոչ
նականացն յուրախութիւն դառնալ:
21 * Կոչեաց զփղապետն դարձեալ, մե_
ծաւ պատուհասիւ սկսաւ խօսիլ
ընդ նա՝ և ասէ. քանի՞ցս անգամ
քեզ վասն նոցա. ով թշուառական,
պատուիրեալէ վառել՝ կազմել՝ պատ
րաստել զփիղսն. դոնէ արդ առ_
վաղիւ պատրաստեսցես եղեռնաւոր
թշուառական ազգին հրէից:
22 * Իբրև զայն լուէին բազմականքն ա_
մենայն. առաւել զարմանային ընդ
յեղեղուկ միտս թագաւորին. և ա_
սէին: ցե՞րբ է այդ՝ արքայ. ցե՞րբ 'ի
միտս քո փորձես զմեզ. արդ՝ երից
անգամ հրամայեալէ սատակել զազգն
դժպիհ. և դարձեալ միւսանգամ
զքոյին հրամանսդ անդրէն եղծա_
նես: զի արդ վասն այսորիկ և քա_   զի վասն այսորիկ
ղաքս ամենայն 'ի ժողովս իւրեանց
առաւել վշտացեալ են, քան զայն
չարագործս:
23 * Յայսմանէ ամենայնիւ վրիպակ ար
քայն լի եղև յիմարութեամբ. 'ի վա
րանս մտանէր. և յայն ինչ ո՛չ հայէր.
որ յերկնից այցելութին էր 'ի վերայ
հեբրայեցւոյն. դարձեալ սաստկու_
թեամբ երդնոյր զերդումն անկա_
տար. և ասէ. առանց իրիք երկուա
նալոյ զնոսա 'ի դժոխս յուղարկեցից.
առաթուր կոխեալս անհնարին դա_
զանացն. զօրաժողով լինիլ. հասա
նիլ վաղվաղակի 'ի վերայ հրէաստա
նի առ հասարակ. զփայտակերտն

հուրբ դատել. և զկաւակերտոն Ջուրբ լուծանել. և 'ի գերութեան վարել առ հասարակ զինչս և զստացուածս. և որինչ կայ 'ի նմա. և զայն պահեստ 'ի մէնջ զտաճարն նոցա՝ հրձիգ առնել. և զնա զտուն զոհից զամենայն աւուրս ժամանակաց՝ կացուցանել։

24 * Յայնմ՝ ժամանակի հաստատութբ լուեալ կոչնականքն և բարեկամք և տոհմայինն սիրելիք. հաստատութեամբ զբանին լուեալք՝ զուարճացեալք դնային. հրաման տային զօրացն՝ յամուր վայրի արգելեալս. շուրջ գիշերապահս և խրամապահս կացուցանել։

25 * Իսկ փղապետն յանհնարին մոլորութբ զգազանսն վառեալ պատրաստէր. խնկեալ գինւով կնդրկախառն զահեղ պատրաստութիւն. վառէր զդիհագին գազանսն առ վաղիւ անդր անթիւ զօրաց գէշ անկեալ. հասեալ յասպարիսի անդ։ արդ եկն եմուտ 'ի սրահ անդր. տախիչէր տագնապաւ զթագաւորն 'ի կատարումն կայեալ ժողովրդեանն։

26 * Յայնմ ժամանակի ամենայն զօրօքն անհնարին գազանօքն դիմեալ գայր 'ի ներքս թագաւորն. 'ի մոլի եդեալ անգութ աչօք. անողորմ սրտիւ. ինքնին տեսանել զվշտագին սատակումն թշուառական ազգին.

27 * Իբրև եկին հասին փղովք պատրաստելովք. և զօրօքն վառելովք 'ի դուռն քաղաքին. ազդ լինէր հրէիցն թնդիւն զօրացն. փայլիւն զինուն. փողին՝ որ ելանէր, դիզանայր՝ յամպս հասանէր. ամբոխ աղաղակին զնոքօք պատեալ միտսն յապուշ դարձուցանէր. և զայն յետին կատարած համարեցան 'ի վերայ թշուառութեան կարծեացն. յողորմ գութ խանդաղատեալ հարք և մարք. ուստերք և դստերք. քորք և եղբարք. տոհմային բարեկամք և սիրելիք, զմիմեանց պարանոցօք անկեալք փարեալ պատեալ համբուրէին.

28 * Նա՛ կէսքն զմատաղածին մանկունս 'ի գիրկս առեալ զյետին զանծուծ ստին 'ի բերան եդեալ տալոյն համարէին. և մինչ դեռ յայնմ աղէտս տարակուսի և շտապ տագնապի էր՝ 'ի թա՛ւ մածեալ կային. յիշեցին զառաջին օգնականութիւնն, որ եղև յերկնից. առ հասարակ միաբան 'ի միմեանց մեկնէին. և 'ի տղայ մանկանց բերանոցն զստինսն 'ի բաց կորզէին. և առ հասարակ անկեալ առաջի մեծութեանցն Ածութեանն թաւալէին. ձայն բարձեալ մեծաւ բարբառով 'ի գոչիւն լալոյ. զամենազօրն զամենակալն աղաչէին. 'ի գութ դառնալ մեծաւ ողորմութբ. փրկել զհատեալս 'ի լուսոյ՝ հասեալս մերձեալս 'ի դրունս դժոխոց։

## ԳԼ. Զ.

1 Եղեազարոս ոմն անուն՝ այր երևելի 'ի գնդէ քահանայիցն, յեցեալ 'ի ծերութիւն. զարդարեալ լուսաորեալ ամենայն քաջութեամբ և արդարութեամբ 'ի մանկութենէ իւրմէ. հազիւ ինչ զծերսն՝ և զամենեսին որք զիւրեն էին՝ հանդարտեցուցանէր. և առինքն յարեալ 'ի ծրն Ած աղօթս մատուցանէր. և յառաջ մատուցեալ ասէր այսպէս։

2 * Թագաւոր մեծազօր. բարձրեալ՝ ամենակալ Ած. որ զամենայն վարես՝ և ուղղես 'ի գթութիւնս ողորմութեանց քոց. հայեա՛ց 'ի վերայ աբրահամեան զաւակիս. 'ի սրբոյ իսահակայ. 'ի յորդիս յակոբայ. 'ի բաժին սրբութե՛ քոյ՝ 'ի ժողովուրդ օտար յօտար երկիր 'ի կորուստ մատնեալ։

3 * Դու այն Ած ես. որ զփարաւոն բազմացեալ կառօք և երիվարօք և զօրօքն եգիպտացւոց. զհպարտացեալ՝ բարձրացեալ՝ մեծաբանեալ՝ ամբարտաւանեալ զօրօքն հանդերձ ծովաթաղս 'ի կորուստ յուղարկեալ ընկղմեցեր.

4 * Դու՝ որ զանթիւ զօրսն սերձացեալս՝ պարծեցեալս՝ սանատրկով արքային ասորեստանեայց. որ 'ի մի տայր սուսերի. և 'ի մի տեղ նիզակաց առեալ. աւարեալ. ամփոփեալ զերկիրն ամենայն հրէաստանի. հպարտացաւ ես հասանիլ ծանր բարբառով. յանդուգն սաստկութեամբ մեծաւ նախատանօք 'ի վերայ քաղաքին սրբութեանց։ Դու Տր ամենակալ հարեր՝ բեկեր՝ կործանեցեր. յայտ յանդիմանութեամբ ցուցեր զզօրութիւն բազկի քոյ ամենայն հեթանոսաց։

5 * Դու որ յերկրին բաբելացւոց երեք մանկունքն ինքնակամ զանձինս 'ի հուրն մատնեցին, զի մի՛ երկիրպագցեն սնոտեաց պաշտամանց՝ փրկեցեր. զի և հերոյ վարսից նոցա ոչ մեղանչեաց հուրն. ձարակ ետուր հրոյն զօրութեանց զթշնամիս։

6 * Դու՝ որ 'ի նախանձ նենգութեան 'ի գուբ արկեալ զդանիէլ՝ 'ի բերանոյ անհնարին գազանայն 'ի լոյս ածեր անարատ պահեալ։

7 * Դու և զհիւրն անդնդոց տեսեր. զի մաշիւր 'ի պորտ ձկանն՝ անարատ

ածեալ

ածեալ յանդիման ընտանեաց իւրոց կայուցանէիր ։

8 *Դու Հայր. և արդ՝ ամբարտաւանեաց. բարեսէր. ողորմած. ապաւէն ամենայնի. արագ երևեաց 'ի վերայ ազգիս Իսրայէլացւոց. որք 'ի ձեռս պղծոց՝ անօրինաց հեթանոսաց անկեալք քաշքշեալ կան 'ի պատուհասի ։ 9 *Ապա եթէ ըստ ամպարշտութեան կեանքս մեր 'ի վախճան մահու այսու ստուգիւ հասեալք իցեն. 'ի ձեռացս միայն 'ի թշնամեացս փրկեա զմեզ. և որովք կամեսցիս ստորիւ պատիժ պատուհասիւք դատեսջիր զմեզ. զի մի ընդունայնամիտ զբախորհուրդ հեթանոսք պարծեսցին առաջի սնոտեայն իւրեանց 'ի վերայ կորստեանս մերոյ. և ասասցեն. եթէ ոչ Ածն իւրեանց փրկեաց զնոսա 'ի ձեռաց մերոց ։

10 *Ամենակալ դու որ զամենայն զօրութիւն և զիշխանութիւնս՝ և զպետութիւնս 'ի ձեռս քո ունիս. անուշակ՝ անմահ, ողորմած Աստուած՝ ողորմեա՛ գթա՛ 'ի մեզ. որ այսչափ անօրէն թշնամանօք զանկարգ զանխնամ պատուհաս մահու յանձին կրեալ. 'ի կենաց 'ի մահ՝ զօրէն չարագործաց յուղարկիմք ։

11 *Հաշեսցէ, և մաշեսցէ զհեթանոսս զօրութիւն յաղթութեան քոյ. զի դու զօրութիւն փրկութեան 'ի պատուի քում, 'ի վերայ փրկութեան յակոբեան տոհմին ։

12 *Անկեալ աղաչեն աւասիկ ամենայն ալածրի երամ երամ բազմութիւն տղայոց՝ և սոցուն հարք և մարք արտասուօք. զի ողորմութի քո յայտնի լիցի ամենայն հեթանոսաց. եթէ դու Տր մեր ընդ մեզ ես. և ո՛չ դարձուցեր զերեսս քո 'ի մէնջ. այլ որպէս յառաջ իսկ խոստացար. եթէ և յերկրի թշնամեաց նոցա զնոսա 'ի ձեռաց ո՛չ թողից. և արդ զնոյն բանս հրամանի քոյ կատարեսջիր Տր ։

13 *Այն ինչ լինէր՝ եղէազարու զաղօթսն առ Աստուած մատուցանել. և թագաւորն գազանօքն և զօրօքն հանդերձ յասպարէզ անդր մեծաւ բարկութեամբ հասանէր. զաչս 'ի վեր բարձին որդիքն հեբրայեցւոց. իբրև զայն տեսին՝ 'ի ձայն մեծ գոչման յերկինս զաղաղակ բարձին. յայն ձայն գոչմանն առ հասարակ լերինքն և հովիտքն անդէն կրկնեալ բարբառով ընդդէմ հնչեցին. անհնարին խռովութիւն յերկոցունց աղաղակէ գոչմանն 'ի վերայ զօրացն հասանէր ։

14 *Յայնմ ժամանակի բարձրեալն փառօք՝ մեծապատիւ ամենակալ՝ ճշմարիտն Աստուած երևեցոյց զերեսս իւր. եբաց նա զդրունս երկնից. ուստի եկին իջին երկու փառաւորեալք աներևոյթ հրեշտակք. զի ո՛չ ումեք երևէին՝ բայց միայն հրէիցն ։ 15 *Նո՛ հարան 'ի դիմի թշնամեացն. և լցին զզօրսն խռովութբ. և լի արարին ահիւ և դողութեամբ. և առ հասարակ զամենեսեան անշարժ կապեալ՝ պատեալ՝ պաշարեալ պահէին. և թագաւորին գլխովին սոսկացեալ դողացեալ և քստմնեալ լինէին ոսկերքն և մարմինքն. սաստն խստութեան գազանութեան՝ և արտմութի բարկութեան անդրէն յապուշ մնաս եղծանէին. և գազանքն անդրէն յետս 'ի վերայ վառեցելոց զօրացն յարձակէին. և զբազումս 'ի նոցանէ առաթուր հարեալ անդէն առ ոտս իւրեանց սատակէին ։

16 *Նոյնժամին տեղւոջ վաղվաղակի թագաւորին բարկութի՝ 'ի գութ՝ յարտասուս վասն առաջնոյ պնդութե յամառութեան խստութեանն հարկանիւր. զի իբրև լուաւ զգոչիւն բարբառոյն՝ և զմտաւ եած զկործանս բազմաց, զայրացաւ՝ հարաւ յարտասուս. խօսիլ սկսաւ ընդ բարեկամսն լի՛ բարկութբ՝ և ասէ ։

17 *Անցիք՝ գնացիք. ապաքէն բռնացայք. և թագաւորել կամիք. և զիս իսկ 'ի վերայ ամենայն երախտեացն 'ի մտաց՝ 'ի խորհրդոց՝ 'ի տէրութենէ առ հասարակ մերժել կամիք. գողացայք աւադիկ զմիտս իմ խորհրդականքդ առաքինիք. և զինչ ոչ է օգուտ տէրութեան մերում, զայն առնել տալ մեքենայիք ։

18 *Ո՞վ է, որ զհզօր աշտարակդ և զհաւատարիմ աւանդապահդ ուխտից մերոց ։ ո՞վ է՝ որ զսոսա յիւրաքանչիւր տեղեաց բնակութէ իբրև զգազանս ինչ չարագործս յայս տեղի կապեալս՝ կուտեալս՝ պաշարեալս պահէ ։ ո՞վ է. որ զսոսա 'ի սկզբանէ ընդ մեզ միաբանութեամբ և արդարութեամբ քան զամենայն ազգս և ազինս 'ի մէջ բազում պատերազմաց և խռովութեան 'ի ժամանակի հաւանութեան զարդարութի պարհեալ, այսպիսի անօրէն չարաչար տանջանօք ածեալ՝ կապեալ՝ պատեալ՝ պարշարեալ պահէ ։

19 *Լուծէ՛ք՝ արձակեցէ՛ք զանօրէն կապանսդ. յիւրաքանչիւր տեղիս խաղաղութեամբ յուղարկեցէ՛ք՝ զառա-

ջին

ջին զեղեալ լլկութիւն 'ի գրգռու_
թիւս ողոքանաց . մխիթարեցէք զոր
դիսդ ամենակալի Ա՛Յ՝ երկնաւորի՝
կենդանւոյ . որ 'ի սկզբանէ նախնեաց
մինչև ցայսօր ան արգել տէրութիւն
և հաստատուն իրաւունք տուեալք
են մեզ . և թագաւորն յայն օրինա_
կի զբանս իւր մերկանայր :

ողորմանաց
ծոխեցէ*

20 * Իսկ հեբրայեցիքն վաղվաղակի յա
կան թօթափել լուծեալք 'ի կապա_
նաց մահու . զամենակալ փրկիչն՝
զսուրբն Ա՛Ծ իւրեանց օրհնէին . այն
ինչ մազապուրծք 'ի դրանց մահուա
նէ զհաւատալի զերծեալք լինէին :

21 * Իբրև զայն դիւրութիւն դիւրեր
հեբրայեցւոց թագաւորն . ինքն 'ի
ներքս 'ի քաղաքն դառնայր . կոչել
հրամայեր զմուտից դպիրն՝ և ասէ .
համա վաղվաղակի գինի և նաշիհ,
և որ ինչ պիտոյ իցէ ուրախութեան
հրէիցն մատուցանել զեօթն օր . զի
հրամայեցաւ նոցա 'ի նմին տեղւոջ .
ուր համարեցան զեղեռնաւոր սա_
տակումն անձանց իւրեանց կատա_
րել . անդէն զայն եօթն փրկութե՛
անցուցանել : 22 * Յայնմ ժամանակի՝
որ յառաջ մատնցոյց նախատանօք
մերձեցեալ, մանաւանդ թէ մնեալ
իսկ էին ընդ դրունս դժոխոց . փո_
խանակ դառնածաղր օրահասին՝ խն
ձոյս ուրախութեան կացուցեալ 'ի
փրկութեան տեղւոջն . ուր սատակ
մանն և վհին ակն ունէին . բազմա_
կանս բազմականս բաշխեալ լի ու_
րախութեամբ յիւրաքանչիւր կող_
մանս բարժանէին :

23 * Նա՛ փոխանակ արտօսրալից ողբոյն
երգս առեալ 'ի ձայն օրհնութեամբ
հայրենի բարբառովն զնշանագործ
զփրկիչն զԱ՛ստուած օրհնէին . զլա_
լին և զհեծութիւն 'ի բաց մերժե_
ցին . պար առեալ ուրախութեամբ
խաղաղութեան և ցնծութեան նշա
նակ կանգնէին :

24 * Այն օրինակ և թագաւորն վասն
նոցա մեծի տաճարին ժամ տուեալ
ուրախութեամբ բազմաւ զկոչնա_
կանս հրամայեր 'ի ներքս կոչել . ան
պակաս բերանով յերկինս հայեցեալ
բազմապատիկ 'ի վերայ սքանչելի
փրկութեան ժողովրդեանն զԱ՛Ծ 'ի
վեր օրհնէին . և որ յառաջին սա_
տակումն դազանադէշ հաւակերի ըղ
ժողովուրդն նուէրէին . խնդութե՛
յոգւոց ելանէին զամօթ և զհաս
յանձին կալեալ . և զհրաշունչ բար
կութիւնն իւրեանց շիջուցեալ՝ ցըն
ծութեամբ զուրախութիւնն զուար

25 թացուցանէին : * Իսկ հրեայքն՝ որ
պէս և ասացաք յառաջագոյն՝ պարս
ուրախութեան կազմեալ զեօթնօ_
րեայ ժամանակն զուարթութեամբ
ցնծութեամբ օրհնէին զԱ՛Ծ՝ 'ի հաւ
ասար միաբանութեան :

26 * Օրէնս դնէին ընդ ամենայն տե_
ղիս բնակութեան իւրեանց ածել
զաւուրսն զայնոսիկ ուրախութեան .
ոչ վասն հպարտութեան . և ոչ
վասն որկրոստութեան . այլ վասն
գոհութե՛ փրկութեանն . զոր արար
ընդ նոսա Ա՛ստուած :

27 * Կարգեցին խառնել զաւուրսն զայ_
նոսիկ 'ի տօնս տարեկանաց իւրեանց .
և ապա խնդրեցին 'ի թագաւորէ
անտի արձակել զինքեանս յիւրաքան
չիւր տեղիս . յաշխարհամար խառ_
նէին զնա . 'ի հինգերորդ քսաներորդ
պաքոնայ , մինչ 'ի չորրորդն 'ի պի_
փայ , աւուրս քառասուն :

28 * Դարձեալ հրաման ևս արարին 'ի
տեղւոջն առնել զերս և զծախս 'ի
հինգերորդէ անտի 'ի պիփայ , մին_
չև յօրն երրորդ ամսոյ աւուրցն . յո_
րում մեծապէս փառաւոր եցոյց Ա՛Ծ
զողորմութիւն իւր . զի փրկեաց զնո
սա անարատս առ հասարակ . և այն
պէս ուրախ լինէր 'ի հրամանէ թա_
29 գաւորին : * Զի հրամայեալ էր տալ
զամենայն զհանդերձն ուրախութե՛,
մինչև յօրն չորեքտասաներորդ՝ յո_
րում գտին զվճիռ արձակելոյն իւր_
եանց . յանձն էառ թագաւորն . հրա
ման ետ տալ հրովարտակս 'ի քա_
ղաքս քաղաքս . առ զօրավար զօրա_
վար օրինակ զայս :

## ԳԼ. Ե.

1 Արքայ փիլօպատովր պտղոմէոս
'ի կողմանս եգիպտացւոց առ
զօրավարս՝ և առ ամենայն իշխանս՝
և պետս . որ 'ի վերայ իրաց արքունի
են՝ ողջոյն . դուք խրախ լիջիք . զի
և մեք ողջ եմք որդւովք և եղբարբք,
և ամենայն զօրօք հանդերձ . որպէս
զի ուղղեաց Ա՛Ծ զիրս մեր . որպէս
մեր իսկ միտք խնդրէին :

2 * Արդ ոմանք 'ի ներքեին բարեկամաց
ստի մերոց՝ ըստ իւրեանց չարա_
բարոյութեան կանխեալ մերձե_
նային չարախօսք լինել . գրգռէին
զմիտս մեր . մինչև ածին 'ի հաւա_
նութի՝ տալ հրաման՝ ժողովել զա_
մենայն հրէայ ազգ՝ որ ընդ մերով
իշխանութեամբ իցեն՝ խունել 'ի մի
վայր՝ կատարել 'ի նորատեսիլ տան_
3 ջանաց : * Նա՛ ամենևին թուլ ոչ

ետուն

եառն սրատմտաւս եղեալ զոխութն. որք ունէին ընդ ամենայն հեթանոսս. մինչև ածին՝ ժողովեցին՝ զորս կապեալս ևս ածին. բազում լլկութեամբ և չարչարանօք իբրև զանաշխարհիկս. մանաւանդ թէ իբրև զչարագործս. առանց ամենայն հարցափորձի քննութեան յօժարեցան կոտորել զնոսա միանգամայն՝ քան զխուժս և զդուժս վայրենագոյն ևս զգածեալ էր զնուրեամբք զգազանութիւն:

4 *Բայց մեք որպէս սովոր եմք՝ զնոսա խստագոյնս պատուհասեսցուք. այլ որպէս մարդասիրութիւն ունիմք ընդ ամենայն մարդիկ. հազիւ մինչ նոցա զոգիսն չնորհեցաք՝ և մեք զԱծ երկնաւոր ծանեաք. զի ճշմարտութեամբ այցելու եղև հրէիցն՝ որպէս զի հայր որդւոց լինիցի:

5 *Այլ դարձեալ նոցա զսէր և զմիամտութիւն որպէս զի հաստատուն ունելով մեզ 'ի նախնեաց մերոց. մինչև թողաք դոցա զամենայն վնաս. զոր եդին 'ի վերայ. և զայս ևս հրամանս տուաք. զի զամենեցուն դոցա զորինչ և ուրուք առեալ իցէ՝ յիւրաքանչիւր տէր դարձուցանել. զի ոք 'ի նոցանէ ամենևին մի՛ զրկեսցի. և մի՛ ոք իշխեսցէ նախատել զնոսա վասն իրացդ եղելոց:

6 *Օ՜ի զայս գիտասջիք. եթէ ինչ զդոսա խորամանկել կամ տրտմեցուցանել յօժարիցուք՝ ոչ առ մարդ մեղանչեմք, այլ առ այն՝ որ ամենայն զօրութեանց և բարձրութեանց տիրէ Աստուած. և ոչ եթէ 'ի մարդոյ միայն հատուցումն գտանէ այն պխսին. այլ անվրէպ ամենայն իրօք 'ի բարձրելոյն գտանէ. և դուք ողջ լինիջիք:

7 *Իբրև առին զհրովարտակն զայն. ոչ եթէ փութացան ելանել վաղվաղակի. այլ մատեան առ թագաւոր անդր՝ աղօթս մատուցանել՝ և ասել. յազգէ ատի հրէից՝ որք զսուրբն Աստուած խնքնակամ ուրացան. և անցին ըստ օրէնսն ԱՅ. հրամայել տալ 'ի ձեռս նոցա. ըստ արժանի գործոյն ածել զպատուհասն 'ի վերայ նոցա. և ասէին. եթէ մարդք՝ որք վասն պորտոյն և որկորոյն չարութեան՝ յօժարեցան անցանել ըստ օրէնս նախնեացն. երբէք նոքա յիւր արքունի արդարական միամտութեամբ ոչ կարէին:

8 *Իրաւունս համարեցաւ թագաւորն. և ետ նոցա իշխանութիւն՝ զի սատակեսցեն զյանցաւորս օրինացն ԱՅ ընդ ամենայն տեղիս տէրութեան թագաւորին՝ ուր և գտցեն, ամենայն համարձակութեամբ. և ոք ընդդէմ մի՛ դարձցի՝ մի՛ իշխէք սաստիւք արքունի:

9 *Յայնմ ժամանակի գոհացան. և օրհնեցին՝ որպէս օրէն էր քահանայից՝ և ամենայն ժողովուրդքն. և գլուխ բանից բարբառոյն եդին զալէլուիայ: Ապա նոքա ցնծութեամբ և ուրախութեամբ պագին երկիր. և 'ի թագաւորէ անտի գնացին:

10 *Իբրև անկան յուղի, որք միանգամ՝ անցեալք էին ըստ օրէնսն և անօրինեալք՝ պղծեալք էին յազգատոհմէ անտի, տանջանօք առակելովք սատակէին. և յայն 'ի միում աւուր անդ սպանին աւելի քան զարս երեք հարիւր. և զայն օր ուրախութեամբ կատարէին. զի զպիղծ զանօրէնս՝ զյանցաւորս օրինացն իւրեանց՝ զձերբակալ ըմբռնեալս սատակէին. քանզի՝ ինքեանք 'ի դրանց մահու յԱծ ողորմութեանցն զփրկութիւն գտեալ էին:

11 *Չուեցին՝ խաղացին՝ գնացին 'ի քաղաքէ անտի ազգի ազգի անուշութեամբ. և 'ի գոյնագոյն ծաղիկս պսակեալք՝ ուրախութեամբ և ցնծութեամբ և օրհնութեամբ 'ի ձայն քաղցրութեան գոհանային զԱծ հարցն նոցա. որ յաւիտենից է փրկիչ իսրայէլի:

12 *Այլ իբրև եկին՝ հասին 'ի քաղաքն պտղոմէացւոց՝ որ անուանեալ կոչի վասն տեղւոյն յայտնութեան՝ վարդաբեր. քանզի իսկ անցեալք կացեալք մնային նոցանօքն՝ որով եկեալ անդ 'ի հասարակաց հաւանութեան. երադեցին աւուրս եօթն՝ ուրախ լինէին. զի հրամանն տուեալ էր նոցա թագաւորին առատապէս հանդերձ տանել 'ի պէտս ճանապարհին. մինչև երթիցեն յիւրաքանչիւր տեղիս:

13 *Այլ իբրև հասանէին 'ի տեղի, ըստ արժանի իւր պարգևացն՝ գոհանային. դարձեալ եդին օրէնս. և զայն աւուրս ևս խառնել 'ի տօնս տարեկանաց իւրեանց կատարել յուրախութեան. նուէրս մատուցին. արձանս կանգնեցին ըստ տեղեաց ուրախութեան. խառնեցին զաւուրսն զայն 'ի տօնս տարեկանաց:

14 *'Ի մի վայր ժողովեցան. աղօթս մատուցին՝ և գոհացան. մեկնեցան 'ի միմեանց ողջք և անարատք. ազատեալք. խրախամիտք. զուարթացեալք՝ ապրեալք ընդ ծով և ընդ ցամաք և ընդ գետս 'ի կամաց ՏՆ,

'ի հրա_

՚ի հրամանէ Թագաւորին յիւրաքանչ
իւր տեղիս սփռեցան ։
* Այլ յառաջ ընդ ձեռամբ Թշնամ 15
ւոյն էին . ապա իշխանութեան փա
ռօք և շքով գնային . զի ամենևին
զնոսա այնուհետև ոչոք կարէր խռո
վել ։ և զիւրաքանչիւր ինչս և զստա
ցուածս յաշխարհագրին զամենայն
ժողովեցին . զի ահի՛ և դողութե՛
ամենեքեան՝ որ զինչ առ ումեք կայր՝
բերէին՝ և տային ՚ի դուրս վասն փը
կութեան մեծին Ի.Ղ ։ Օրհնեալ է
Ի.Ծ՝ որ յամենայնէ փրկէ զիւրայսն
յամ նեղութեանց՝ և ՚ի վշտաց ։ նմա
փառք՝ և պատիւ՛ և զօրութի այժմ
և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։

Կատարեցաւ Երկրորդ Գիրք Մակաբայեցւոց ։



Եւ ասէ Տր ցսատանայ, ապաքէն հայեցա՞ր ընդ ծառայ իմ Յոբ յայր արդար. Յոբ.2.3.



Եւ լուեալ երից բարեկամացն զչարիսն զայն, որ հա_սին ՚ի վր նր. եկին մխիթարել զնա. Յոբ.2.11.

# ԳԻՐՔ ՅՈԲԱՅ.

Գլուխ Առաջներորդ :

1 ԱՅՐ ՈՄՆ ԷՐ ՅՈՒՍՏԻՐ աշխարհի որում անուն էր յոբ : և էր այրն այն ճշմարիտ. անարատ. արդար. Ածապաշտ. մեկնեալ յամ իրաց չարութեց մեղաց : 2 *Եղեն նր ուստերք եօթն՝ և դստերք երեք : 3 *Եւ էին խաշինք նորա՝ եօթն հազար ոչխարք՝ ուղտք երեքհազար՝ լուծք եզանց հինգհարիւր : և էշք մատակք արօտականք հինգհարիւր : և սպասք բազում՝ յոյժ . և գործք մեծամեծք էին նր ՚ի վերայ երկրի : և էր այրն այն ազնուական քան զամ՝ արևելեայսն : 4 *Միաբանեալ կային որդիքն նր առ մի_մեանս՝ առնէին խրախութի զօրհանապազ՝ առեալ ընդ իւրեանս և զերեսին

քա

քորսն իւրեանց ուտել՝ և ըմպել ընդ նս : 5 *Եւ իբրև յանկ ելանէին աւուրք խրախութեն նց. առաքէր յոբ՝ և սրբէր զնոսա. յարուցեալ ընդ առաւօտս մատուցանէր վասն նց զողջս ըստ թուոյ նոցա : և զուարակ մի վն մեղաց ընդ ոգւոց նց. քանզի ասէր յոբ՝ թէ գուցէ որդիքն իմ իմացան ՚ի միտս իւրեանց չարութի զԱծ . այսպէս առնէր յոբ 6 զամ աւուրս նց : *Եւ իբրև եղև զօրս զայս՝ եկին հրեշտակք Այ կալ առաջի Տն. եկն և սատանայ ընդ նս : յա_ 7 ծեալ յերկրի և շրջեալ ՚ի նմա : *Եւ ասէ Ած ընդ սատանայ՝ ուստի՞ գաս. պատասխանի ետ սատանայ Տն, և ասէ. շրջեալ ընդ երկիր՝ և յածեալ ՚ի ներ_ 8 քոյ երկնից՝ եկեալ կամ : *Եւ ասէ ցնա Տր. նայեցա՞ր մտօք քովք ընդ ծառայ իմ ընդ յոբ. զի ոչ գոյ իբրև զնա ՚ի վր երկրի այր՝ անարատ՝ ճշմարիտ՝ Ածապաշտ՝ մեկնեալ յամ իրաց 9 չարաց : *Եւ պատասխանի սատանայ. և ասէ առաջի Տն. մի թէ ձրի՞ պաշտէ



յէ

ցէ յօբ զՏր: 10 *Ո՞չ դու ամրացուցեր զարտաքին նր՝ և զներքին տան նորա. և որինչ միանգամ արտաքոյ շուրջ զնո վաւ է: զգործս ձեռաց նր օրհնեցեր. և զանասուն նր բազմացուցեր 'ի վր երկրի: 11 *Բ՛այց առաքեա՛ դու զձեռն քո. և ա՛րկ յամ ինչս նր. եթէ ո՛չ յերեսս քո օրհնեսցէ զքեզ: 12 *Յայնժամ ասէ Տր ցսատանայ. ահա զամ ինչս նր տամ 'ի ձեռս քո. բայց 'ի նա մի՛ մերձենայցես: և ել սատանայ յերեսաց Տն:

13 *Եւ՛ էր իբրև զօրս զայս. ուստերքն յօբայ՝ և դստերք նր՝ ուտէին և ըմպէին գինի 'ի տան երիցու եղբօրն իւրեանց: 14 *Եւ՛ ահա հրեշտակ եկն առ յօբ՝ և ասէ ցնա. հարկիք եզանցն վարէին. և էշքն մատակք արածէին առ նոքօք: 15 *Եւ՛ եկին գերեվարք. և գերեցին զնս. և զմանկտին կոտորեցին սրով. ես մի այն ապրեալ եկի պատմել քեզ: 16 *Եւ՛ մինչ դեռ նա խօսէր՝ այլ հրեշտակ եկն առ յօբ՝ և ասէ ցյօբ. հուր անկաւ յերկնից՝ և այրեաց զհօտսն. և զհովիւսն ըստ նմին օրինակի եկեր. ես միայն մնացեալ՝ եկի պատմել քեզ: 17 *Եւ՛ մինչ դեռ նա խօսէր, այլ հրեշտակ եկն՝ և ասէ ցյօբ. ասպատակաւորք ասպատակեցին 'ի մեզ երեք առաջք՝ և պատեցան զուղտուքն՝ և գերեցին զնս. և զմանկտին կոտորեցին սրով. ես միայն ապրեալ եկի պատմել քեզ: 18 *Եւ՛ մինչ դեռ նա խօսէր. այլ հրեշտակ գայր՝ և ասէր ցյօբ. մինչ դեռ ուստերքն քո, և դստերք ուտէին՝ և ըմպէին՝ առ երիցու եղբօրն իւրեանց: 19 *Յանկարծակի հողմ մեծ եկն յանապատէ՝ և էհար զչորեսին անկիւնս տանն. և անկաւ տունն 'ի վերայ որդւոցն քոց՝ և վախճանեցան. և ես միայն ապրեալ եկի պատմել քեզ: 20 *Ա՛պա յարուցեալ յօբ՝ պատառեաց զհանդերձս իւր. և կտրեաց զվարսս գլխոյ իւրոյ. և անկեալ 'ի գետին երկիր եպագ Տն: 21 *Եւ՛ ասէ՝ մերկ ելի ես յորովայնէ մօր իմոյ՝ և մերկ անդամ դարձայց անդր: *Տր ետ՝ և Տր էառ. որպէս Տն հաճոյ թուեցաւ՝ նոյնպէս և եղև. եղիցի անուն Տն օրհնեալ: 22 *Եւ՛ յայսմ ամ անցս՝ որք անցին ընդ նա. ոչ մեղաւ յօբ առաջի Տն՝ և ոչ ետ անզգամութի Այ:

Սաղմ. 5. 14. 1. Տիմ. 6. 7.

## ԳԼ. Բ.

1 Եւ՛ եղև իբրև զօրս զայս. և եկին հրեշտակք Այ կալ առաջի Տն. եկն և սատանայ 'ի մէջ նց կալ առաջի Տն: 2 *Եւ՛ ասէ Տր ցսատանայ. դու ուստի՞ գաս: յայնժամ ասէ սատանայ առաջի Տն: սահեալ 'ի ներքոյ երկնից՝ և շրջեալ ընդ ամ, եկեալ կամ: 3 *Եւ՛ ասէ Տր ցսատանայ. ապաքէն հայեցար ընդ ծառայ իմ յօբ. զի ոչ գոյ իբրև զնա 'ի վերայ երկրի այր արդար՝ ճշմարիտ՝ Այ ծառայող՝ մեկնեալ յամ չարութէ. և տակաւին կայ յանմեղութե. և դու տարապարտուց խօսեցար կորուսանել զինչս նր: 4 *Արկնեաց անդրէն սատանայ՝ և ասէ ցՏր: մորթ ընդ մորթոյ. և որինչ իցէ մարդոյ, ընդ անձին իւրոյ տուժեսցի: 5 *Ա՛պա թէ ո՛չ ա՛ղէ առաքեա՛ զձեռն քո. և ա՛րկ զոսկերօք նր՝ և զմարմնովք. եթէ ո՛չ յերեսս իսկ օրհնեսցէ զքեզ: 6 *Եւ՛ ասէ Տր ցսատանայ. ահա մատնեմ զնա քեզ. բայց միայն զոգի նր պահեսցես: 7 *Եւ ել սատանայ յերեսաց Տն. և էհար զյօբ չարաչար կեղով յոտից մինչև ցգլուխ: 8 *Եւ՛ առեալ խեցի քերէր զթարախն. և նստէր յաղբիւս արտաքոյ քաղաքին: (իբրև բազում ժամանակ անցանէր 'ի վր:) 9 *Ա՛սէ ցնա կինն իւր. մինչև յերբ ժուժկալեալ ասիցես՝ թէ ահա համբերից տակաւին սակաւիկ ինչ ժամանակ՝ ակն կալեալ յուսոյ փրկութե իմոյ: ահաւադիկ ապականեալ է յիշատակ քո 'ի վր երկրի. ուստերքդ և դստերքդ՝ իմոյ որովայնի երկունք և երկունք. յորս տարապարտուց վաստակէի աշխատանօք. դու ինքն 'ի զաղբութեն որդանց նստիս օթագայեալ բացական. և ես մոլորեալ և հարկահար. տուն 'ի տանէ. և տեղի 'ի տեղւոջէ. սպասեմ, թէ երբ մտանիցէ արեգակն՝ զի հանգեայց 'ի աշխատութեանց իմոց՝ և 'ի ցաւոց իմոց. որք այժմ պատեալ քեն զինև. ա՛ղէ ասա՛ բան ինչ առ Տր. և վախճանեաց: 10 *Եւ՛ նր հայեցեալ ընդ նա՝ ասէ. իբրև զմի 'ի կանանց անզգամաց խօսեցար: եթէ զբարիսն ընկալաք 'ի ձեռանէ Տն չարեացս ո՞չ համբերիցեմք: և յայսմ ամի որինչ անցին ընդ նա, ո՛չ մեղաւ յօբ շրթամբք իւրովք առաջի Տն. և ո՛չ ետ անզգամութի Այ: 11 *Եւ՛ լուեալ երից բարեկամացն զչարիսն ամ, որք հասին 'ի վր նր: եկին յիւրաքանչիւր աշխարհէ առ նա: եղիփազ արքայ թեմնացւոց. բաղդատ բռնաւոր սօքեցւոց. սօփար արքայ մինեցւոց: և եկին առ նա միաբան մխիթարել զնա: 12 *Եւ՛ տեսեալ զնա 'ի բացուստ՝ ոչ ծանեան. և բարբառեալ մեծաձայն լացին: պատառեցին իւրաքանչիւր զպատմուճանս իւրեանց. և ցանեցին հող 'ի վր գլխոց իւրեանց ընդ երկինս: 13 *Եւ՛ նստան շուրջ զնովաւ զեօթն տիւ և

զեօթն

զեօթն գիշեր ։ և ոչոք 'ի նոցանէ խօսեցաւ ընդ նմա բան ․ քանզի տեսանէին զանհնարին հարուածսն և զմեծամեծս յոյժ ։

## Գլ: Գ:

1 Եւ ապա ուրեմն յոբ եբաց զբերան իւր․ և անէծ զօրն իւր։ 2 * Եւ ասէ․ 3 *|| Կորիցէ օրն՝ յորում ես ծնայ․ և գիշերն՝ յորում ասացին՝ թէ արու է ։ 4 * Խաւարեսցի գիշերն այն՝ և մի խնդրեսցէ զնա Տր 'ի վերուստ․ և մի եկեսցէ 'ի վերայ նորա լոյս ։ 5 * Ընկալցի զնա խաւար՝ և ստուեր մահու ։ և եկեսցէ 'ի վր նորա մէգ ։ 6 * Անիծեալ լիցի օրն այն՝ և գիշերն․ և տարցի զնա խաւար․ մի եղիցի յաւուրս տարւոյ՝ և մի թուեսցի յաւուրս ամսոց ։ 7 * Այլ գիշերն այն եղիցի 'ի ցաւս․ և մի եկեսցէ 'ի վր նորա ուրախութի և ցնծութի ։ 8 * Այլ նզովեսցէ զնա՝ որ նզովելոցն է զօրն զայն․ որ զբուռն ածելոց իցէ զմեծ վիշապն ։ 9 * Խաւարեսցին աստեղք գիշերոյն այնորիկ․ սպասեսցի, և 'ի լոյս մի եկեսցէ․ և մի տեսցէ զարուսեակն ծագեալ ։ 10 * Զի ոչ փակեաց զդրունս արգանդի մօր իմոյ․ զի թերևս մերժէր զցաւս յաչաց իմոց ։ 11 * Իսկ ընդէ՞ր յորովայնի ոչ վախճանեցայ․ այլ ելի յարգանդէ՝ և ո՛չ անդէն վաղվաղակի կորեայ ։ 12 * Ընդէ՞ր գրկեցաւ ինձ ծնունդ․ և ընդէ՞ր դիեցի ես զստինս ։ 13 * Զի այժմ հանդարտեալ դադարէի՝ և ննջեցեալ հանգչէի ։ 14 * Ընդ թագաւորս և ընդ խորհրդականս երկրի․ որք հպարտացեալ քէին 'ի սուրս իւրեանց ։ 15 * Կամ ընդ իշխանս՝ որոց բազում էր ոսկի․ որք լցին զտունս իւրեանց արծաթով ։ 16 * Կամ իբրև զանցուցեալն․ որ ելանէ յարգանդէ մօր իւրոյ․ կամ իբրև զտղայս՝ որք ո՛չ տեսին զլոյս ։ 17 * Անդ ամպարիշտք բորբոքեցին զսրտմտութի բարկութե ։ անդ հանգեան աշխատեալք մարմնով ։ 18 * 'Ի միասին յաւիտենականքն ։ ոչ լուան զձայն հարկահանի ։ 19 * Փոքր և մեծ անդ են․ և ծառայ աներկիւղ 'ի տեառնէ իւրմէ ։ 20 * Իսկ ընդէ՞ր տուեալ իցէ դառնացելոց լոյս․ և կեանս ցաւագնելոց ոգւոյք ։ 21 * Որք ցանկան մահու․ և ոչ հասանեն․ փորեն իբրև զգանձս ։ 22 * Եւ խնդալից լինին․ եթէ գտանիցեն զմահ ։ 23 * Մարդոյ հանգիստ է․ զի փակեաց զնովաւ Տ՛ր ։ 24 * Յառաջ քան զկերակուրս իմ հեծութի է հաս․ արտասուօք և ահիւ նեղեալ եմ ։ 25 * Զի երկիւղն՝ յորմէ խիթայի, եկն 'ի վր իմ․ և յորմէ կասկածէի՝ պատահեցաւ 26 ինձ ։ * Ոչ խաղաղացայ՝ ոչ դադարեցի՝ ոչ հանգեայ․ քանզի եկն 'ի վերայ իմ բարկութի ։

Երեմ. 20.14.



## Գլ: Դ:

1 Սկսեալ անդրէն Եղիփազու Թեմանացւոյ՝ ասէ ։

2 Մի թէ բազում անգամ լեալ իցէ քո բանք աշխատութե․ և զօրութե բանից քոց ո՞ հանդարտեսցէ ։ 3 * Զի եթէ խրատեցեր դու զբազումս․ և զձեռս տկարի մխիթարեցեր ։ 4 * Եւ զհիւանդացեալս կանգնեցեր բանիւք․ և ծնգաց կթուցելոց քաջալերութի զգեցուցեր ։ 5 * Եւ արդ՝ եկին հասին 'ի վր քո ցաւք․ սակայն դու վաղվաղեցեր ։ 6 * Ոչ ապաքէն երկիւղդ քո անզգամութի է․ և կասկածդ քո՝ չարութի ճանապարհի քոյ ։ 7 * Արդ յիշեա՞ ո՞ք որ սուրբ էր՝ կորեաւ․ կամ ճշմարիտք 8 արմատաքի երբէք խլեցան ։ * Զոր օրինակ տեսի զայնոսիկ՝ որք զանպատեհսն արօրադիրս առնեն․ որք սերմանեն 9 զնո՛ ցաւս հնձեսցեն 'ի նոցանէ ։ * 'Ի հրամանէ Տն կորիցեն․ 'ի հոգւոյ բարկութե 10 նորա սատակեսցին ։ * Զօրութի առիւծու՝ գոչիւն մատակ առիւծու՝ պերճութիւն վիշապաց՝ շիջաւ ։ 11 * Մրջիւն առիւծն սատակեցաւ առ 'ի չգոյէ կերակրոյ․ կորիւնք առիւծուց 12 լքին զմիմեանս ։ * Եթէ էր տակաւին բան ճշմարիտ եղեալ 'ի խօսս քո․ ո՛չ ինչ յայդպիսեաց չար պատահիւր քեզ ։ ուրեմն ո՞չ ընդունիցի հրաշակերտս 13 'ի նմանէ ։ * Արհաւիրք՝ և բոմբիւնք գիշերականք․ հասեալ ահ 'ի վր մարդ14 կան ։ * Դողումն և սոսկումն պատահեցան ինձ․ և մեծապէս զոսկերս իմ 15 շարժեցին ։ * Եւ եկն հողմ 'ի վր երեսաց իմոց․ քստմնեցան հերք իմ և մար16 մինք ։ * Կանգնեցայ՝ և ոչ գիտացի ։ տեսի, և ո՛չ էին կերպարանք առաջի աչաց իմոց՝ բայց միայն օդ․ և սոսա17 փիւն լսէի ։ *|| Իսկ արդ՝ մի թէ սուրբ լինիցի մարդ առաջի Տն․ կամ 'ի գոր18 ծոց իւրոց անարատ այր ։ *|| Եթէ ծառայից իւրոց ոչ հաւատայցէ․ և զհրեշտակաց խոտորագոյնս ինչ իմասցէ ։ 19 * Իսկ արդ զբնակեալս 'ի տունս կաւեղէնս․ յորոց և ինքեանք 'ի նմին կաւոյ եմք․ էհար զնոսա ըստ օրինակի ցե20 ցոյ ։ * Եւ յառաւօտէ մինչև յերեկոյ ոչևս իցեն․ քանզի անձամբ անձին օգնել ո՛չ կարէին, կորեան ։ 21 * Փչեաց 'ի նոսա, և ցամաքեցան․ սատակեցան՝ քանզի ոչ էր 'ի նոսա իմաստութիւն ։

|| Ս յոբ. 25. 4.
|| Ս յոբ. 15. 15.
2. Պետ. 2. 4.

## Գլ: Ե:

1 Արդ՝ աղէ կարդա՛, եթէ ոք տայցէ քեզ ձայն. կամ թէ զոք 'ի հրեշտակաց սրբոց տեսցես: 2 * Քանզի և զանզգամս սպանանէ բարկութիւն. և զմոլորեալն մեռուցանէ նախանձ: 3 * Ես ես տեսի անզգամաց արմատս ձգեալ. այլ վաղվաղակի հարան յարկք նոցա: 4 * Հեռի լիցին որդիք նց 'ի փրկուէ. կողկողեսցին առդրունս վատթարաց. և ոչոք իցէ՝ որ փրկիցէ: 5 * Զի զոր նոքայն ժողովեցին, արդարք կերիցեն. և նոքա մի՛ եղիցին ապրեալք 'ի չարեաց: ծծեսցի զօրութիւն նց: 6 * Զի ոչ եթէ յերկրէ ելանիցէ աշխատութի. և ոչ 'ի լերանց բուսանիցին ցաւք: 7 * Այլ մարդ աշխատութե ծնանի. ձագք արծուեաց 'ի բարձունս թռչին: 8 * Բայց սակայն ես խնդրեցից 'ի Տէ. և զՏէր ամենեցուն իշխանն կարդացից: 9 * Որ առնէ զմեծամեծս՝ և զանքննինս, և զփառաւորս՝ և զհրաշակերտս. որոց ո՛չ գոյ թիւ: 10 * Որ տայ զանձրև յերկիր. առաքէ զջուր 'ի ներքոյ երկնից: 11 * Որ առնէ զխոնարհս 'ի բարձունս. և կանգնէ զկորուսեալս: 12 * Նա՛ փոփոխէ զխորհուրդս խորամանկաց. և ոչ գործեսցեն ձեռք նոցա զճշմարտութիւն: 13 * Որ հասանի իմաստնոց հանճարով. և զխորհուրդս բազմախելաց յիմարեցոյց: 14 * Ի տուէ պատահեսցի նոցա խաւար. և 'ի միջօրէի իբրև 'ի գիշերի խարխափեսցեն: սատակեսցին պատերազմաւ: 15 * Նա՛ աղքատն ապրեսցի 'ի ձեռանէ հզօրին: 16 * Նա՛ լիցի յոյս տկարի. բերան անիրաւի խցցի: 17 * Երանեալ է մարդ՝ զոր յանդիմանեաց Տր. և 'ի խրատուէ ամենակալին մի՛ հրաժարեսցիս: 18 * Զի նա ցաւեցուցանէ. և միւսանգամ անդրէն հաստատէ. էհար՝ և ձեռք նր բժշկեցին: 19 * Վեցիցս 'ի վշտաց փրկեսցէ զքեզ. և յեօթներորդումն ո՛չ մերձեսցի առ քեզ չար: 20 * Ի սովու՝ փրկեսցէ զքեզ 'ի մահուանէ: 'ի պատերազմի 'ի ձեռաց երկաթոյ արձակեսցէ զքեզ: 21 * Ի տանջանաց լեզուի ծածկեսցէ զքեզ. և մի՛ երկիցես 'ի չարեաց եկելոց: 22 * Զանիրաւս՝ և զանօրէնս արհամարհեսցես. 'ի գազանաց վայրենեաց ոչ երկիցես: 23 * Զի գազանք վայրենիք խաղաղասցին ընդ քեզ: 24 * Ապա գիտասցես եթէ խաղաղութիւն է տան քում. և բնակութի յարկի քոյ մի՛ վրիպեսցի: 25 * Նա՛ ծանիցես՝ զի բազում է զաւակ քո. և որդիք քո եղիցին իբրև զբանջար վայրի: 26 * Նա՛ երթիցես 'ի գերեզման իբրև զցորեան հասեալ 'ի ժամանակի հնձոց. և կամ իբրև զշեղջ կալոյ 'ի ժամանակի ամփոփեալ: 27 * Ահաւասիկ զայս այսպէս քննեցաք. այս է զոր լուաք. բայց դու գիտասջի՛ր յանձն քո՝ զինչ գործեսցես:

1.Կոր. 3.19.

խրատէ

## Գլ: Զ:

1 Կրկնեալ անդրէն յոբայ՝ ասէ:

2 Եթէ կշռելով ոք կշռէր զբարկութիւնս իմ. և զցաւս իմ միանգամայն բառնայր 'ի լուծ կշռոց: 3 * Քան զաւազ ծովու ծանրագոյն լինէր: Նա՛ ուրեմն բանք իմ անզգամք են: 4 * Զի նետք Տն 'ի մարմնի իմում են. և սրտմտութի նր ծծէ զարիւն իմ. յորժամ՝ սկսանիմ խօսիլ կոտեն զիս: 5 * Իսկ ա՞րդ՝ զիարդ. մի թէ տարապարտուց խանչիցէ ցիռ. բայց եթէ կերակուր խնդրիցէ. կամ եթէ գոչիցէ՞ եզն առ մսուր՝ յորժամ ունիցի զկերակուր: 6 * Կամ ուտիցի՞ հաց առանց աղի. կամ գուցէ՞ համ 'ի բանս ունայնս: 7 * Նա ոչ կարէ հանգուցանել անձն իմ. զի շարաւ տեսանեմ զկերակուր իմ՝ իբրև զհոտ առիւծու: 8 * Զի եթէ տայցէ՝ և եկեսցեն յիս խնդրուածք իմ. և զյոյս իմ տայցէ Տր: 9 * Սկսաւ Տր խոցոտել զիս. բայց իսպառ մի՛ սպանցէ զիս: 10 * Եղիցի ինձ քաղաքն իմ գերեզման. յորոյ վերայ պարսպացն ճեմէի. և 'ի նմա ո՛չ խնայեցից. զի ո՛չ ստեմ արարից զբանս սրբոյն Այ իմոյ: 11 * Զի զի՞նչ է զօրութի իմ, թէ համբերիցեմ. կամ զի՞նչ ժամանակ՝ զի հանդարտեսցի անձն իմ: 12 * Մի թէ զօրութի վիմա՞ց իցէ զօրութիւն իմ. կամ մարմինք իմ պղնձի՞ք. կամ թէ ոչ 'ի նմա ապաւինէի. արդ օգնութի իմ մերժեցաւ յինէն: 13 * Նա՛ ողորմութի հրաժարեցաւ յինէն. այցելութի Տն անտես արար զիս: 14 * Ո՛չ հայեցան յիս մերձաւորք իմ: 15 * Իբրև զվտակ պակասեալ. իբրև զալիս անցին զինև: 16 * Որք սարսէին յինէն, արդ աճա՛նին հասին 'ի վր իմ: 17 * Իբրև զձիւն՝ կամ իբրև զսառն պաղեալ: որ հալիցի 'ի հասանելոյ ջերմութե. և ոչ ճանաչիցի թէ որպէս էր: 18 * Նոյնպէս և ես լքայ յամենեցունց. կորեայ՝ և տնանկացայ: 19 * Տեսէ՛ք զճանապարհս թեմնացւոց. որք 'ի շաւիղս սաբայ հայէիք: 20 * Նա՛ ամօթ կրեսցեն յուսացեալքն 'ի քաղաքս՝ և յինչս: 21 * Նա և դուք աւադիկ անողորմ հասիք 'ի վերայ իմ: հայեցեալ 'ի վէրս իմ՝ երկերո՞ւք: 22 * Արդ ես զձեզ ինչ խնդրեցի: 23 * Կամ ձերով զօրութե կարօտեալ իցեմ՝ ապրեցուցանել զիս 'ի թշնամեաց: կամ 'ի ձե-

ռաց

ռաց հզօրաց փրկել զիս ։ 24 *Ուսուցէք զիս՝ և ես լռեցից. եթէ մոլորեալ ինչ իցեմ, արարէք զիս խելամուտ ։ 25 *Այլ ուրեմն խոտանք են բանք ճշմարտի. քանզի ոչ եթէ 'ի ձէնջ խնդրեմ զզօրութիւն ։ 26 *Եւ ոչ կշտամբանք բանից ձերոց լռեցուցանեն զիս. և ո՛չ բարբառոյ բանից ձերոց անսայից ։ 27 *Բայց զի իբրև 'ի վերայ որբոյ յարուցեալ էք 'ի վերայ իմ. և խաղացեալ էք 'ի վերայ բարեկամի ձերոյ ։ 28 *Բայց արդ հայեցեալ յերեսս ձեր ո՛չ ստեցից. նստարո՛ւք դուք. և մի՛ ինչ լիցի անիրաւութիւն ։ 29 *Եւ դարձեալ իրաւանց ուշ ունիցիք ։ 30 *Զի ոչ գոյ 'ի լեզուի իմում անիրաւութիւն. կամ կոկորդ իմ ո՞չ խոկայցէ յիմաստութեան ։

## ԳԼ. Է.

1 Ո՞չ ապաքէն իբրև զփորձութիւն են վարք մարդոյ 'ի վերայ երկրի. և իբրև զաւուրեայ վարձք վարձկանի կեանք նորա ։ 2 *Կամ իբրև զծառայ երկուցեալ 'ի Տեառնէ իւրմէ՝ և զօղեալ ընդ հովանեաւ. և իբրև զվարձկան՝ որ սպասիցէ վարձուց իւրոց ։ 3 *Նոյնպէս և ես սպասեցի ամսոց սնոտեաց. գիշերք ցաւագինք տուեալ են ինձ ։ 4 *Եթէ ննջեցից. ասեմ, երբ իցէ տիւ. և եթէ յառնիցեմ, դարձեալ՝ թէ երբ իցէ երեկ. լի ցաւօք լինիմ յերեկորեայ մինչև յառաւօտ ։ 5 *Թաթաւին մարմինք իմ 'ի զազրութիւն որդանց. մաշեցի բզկոշտս երկրի առ 'ի զթարախս քերելոյ ։ 6 *Եւ կեանք իմ թեթևագոյնք են քան զխօսս. և կորեան յունայնութեան յուսոյ ։ 7 *Յիշեա՛ զի փուք են կեանք իմ. և ո՛չ դարձցի ակն իմ 'ի տեսանել զբարի ։ 8 *Եւ ո՛չ հայեսցի յիս ակն տեսողի ։ աչք քո յիս ։ և ո՛չ ևս իցեմ ։ 9 *Իբրև զամպ ընջեալ յերկնից ։ զի եթէ իջանիցէ մարդ 'ի դժոխս, ո՛չ ևս ելցէ ։ 10 *Եւ ո՛չ դարձցի 'ի տուն իւր. և ո՛չ ևս ծանիցէ զնա տեղի իւր ։ 11 *Այլ սու հետև ո՛չ ևս խնայեցից 'ի բերան իմ, խօսեցայց՝ մինչև իցեմ 'ի վիշտս. բացից զդառնութիւն անձին իմոյ տագնապեալ ։ 12 *Մի թէ ծով իցեմ, կամ վիշապ. զի կարգեցեր զինև պահս ։ 13 *Ասացի՛ թէ մխիթարեսցեն զիս մահիճք իմ. վճարեցից զինէն զբանս իմ յանկողնի իմում ։ 14 *Զարհուրեցուցանես զիս երազօք. և տեսլեամբք հարկանես զիս ։ 15 *Թափես զոգի իմ յանձնէ իմմէ. և 'ի մահուանէ զկեանս իմ ։ 16 *Զի ո՛չ յաւիտեան կեամ. եթէ երկայնամիտ եղէց. 'ի բաց կաց յինէն՝ զի ընդունայն են կեանք իմ ։ 17 *Զի զինչ է մարդ. զի մեծացուցեր զնա. կամ զի հայիցիս 'ի նա միտս ։ 18 *Կամ այցելութիւն առնիցես նմա մինչև ցառաւօտ. և 'ի հանգիստ դատիցիս զնա ։ 19 *Մինչև յերբ ոչ թողուցուս զիս. և ոչ ընդարձակիցես ինձ. մինչև ցաւօք կլանիցեմ զտողունս իմ ։ [զխուխս] 20 *Զի թէ մեղայ. զինչ կարիցեմ առնել քեզ. որ գիտես զմիտս մարդկան. ընդէ՞ր եդեր զիս քեզ ոսոխ. և իցեմ քեզ բեռն ։ 21 *Եւ ընդէ՞ր ոչ արարեր մոռացումն անօրէնութեան իմոյ՝ և սրբութիւն մեղաց իմոց. արդ՝ ահա յերկիր դառնայցեմ կանխեալ. և այլ ոչ ևս իցեմ ։

## ԳԼ. Ը.

1 Կրկնեալ անդրէն Բաղդատայ սօփեցւոյ՝ ասէ ։

2 Մինչև ցե՞րբ խօսիցիս զայդ՝ և ոգի մեծաբանութեան 'ի բերանի քում ։ 3 *Մի թէ անիրաւ դատիցի Տէր. և կամ որ զամ արար՝ պղտորիցէ զիրաւունս ։ 4 *Եթէ որդիք քո մեղան առաջի նորա. առաքեաց 'ի ձեռն զանօրէնութիւնս նոցա ։ 5 *Բայց դու կանխեա՛ առ Տէր 6 ամենակալ աղօթիւք ։ *Եթէ սուրբ՝ և ճշմարիտ իցես, աղօթից քոց լուիցէ. դարձուսցէ զքեզ յարկն արդարութեան ։ 7 *Եւ լինիցին առաջինք քո սակաւք. 8 և վերջինքն քո անբաւք ։ *Բայց ա՛ղէ հա՛րց զազգն առաջին. և քննեա՛ ըստ 9 տոհմից հարցն ։ *‖Զի երեկեանք եմք, և ոչ գիտեմք. զի ստուեր են կեանք 10 մեր 'ի վերայ երկրի ։ *Կամ թէ ոչ նոքին խրատեսցեն զքեզ. և պատմեսցեն. 11 և 'ի սրտէ հանցեն զբանս ։ *Մի թէ կանաչանայ պրտու առանց ջրոյ. և կամ բարձրանայցէ կնիւն առանց ըմպելոյ ։ 12 *Մինչ դեռ անդէն 'ի վերայ արմատոյ իւրոյ է՝ ոչ հնձեսցի. յառաջ քան զամենայն բանջար ոչ ցամաքիցի ։ 13 *Արդ այնպէս եղիցի վախճան ամենեցուն. որք մոռանայցեն զՏէր. զի 14 յոյս ամպարշտի կորիցէ ։ *Անշէն լինիցի տուն նորա. անցցէ իբրև սարդի ոստայն 15 յարկ նորա ։ *Թէպէտ և հաստատեսցէ զտուն իւր, մի՛ կացցէ ։ յարկանել ձեռին նորա մի՛ հանդարտեսցի ։ 16 *Զի խոնաւուտ յարեգակնէ է ։ և 'ի նեխութենէ նորա ելցէ շառաւիղ իւր ։ 17 'Ի վերայ կարկառի քարանց ննջեսցէ. և 'ի 18 մէջ մանրախիճ քարանց կեցցէ ։ *Եթէ ընկլցի զնա տեղին. ստեսցէ, ոչ տե- 19 սեր այսպիսի ինչ ։ *Զի կործանումն ամպարշտի այսպիսի է. և յերկրէ այլ 20 բուսցի ։ *Զի Տէր ոչ մերժեսցէ զանմեղն. զամ պատարագ ամպարշտի ոչ 21 ընկալցի Տէր ։ *Բերանք ճշմարտից լցցին ծաղու. և շրթունք նոցա գոհութբ ։

‖ Սաղմ. 143.4.

Ս.յր. 14.2.

[illegible]

թե̃ ։ *Թշնամիք նո̃ զգեցցին զամօթ. 22 յարկք ամպարշտի ոչ ևս իցեն ։

## Գլ. Թ.

Արկնեալ անդրէն յոբայ՝ ասէ ։ 1

Ճշմարտիւ գիտեմ. թէ այդ այդպէս է. քանզի՝ զիա՞րդ լինիցի մարդ 2 արդար առաջի Տն̃ ։ *Զի եթէ կամի 3 ցի դատել ընդ նմա. ո՛չ լուիցէ նմա. զի մի բան՝ հազար բանի պատասխանի ո՛չ տացէ ։ *Զի իմաստունէ մտօք՝ զօրաւոր՝ 4 և մեծ. ո՞ խստացաւ ընդդէմ նորա, և համբերեաց ։ *Որ հնացուցանէ 5 զլերինս, և ոչ գիտեն. որ տապալէ զնո̃ բարկութե̃ ։ *Որ շարժէ զառ՚ի ներ- 6 քոյ երկնից ՚ի հիմանց. և սիւնք նորա դողան ։ *Որ ասէ արեգական. և ոչ 7 ծագէ. և ընդդէմ աստեղաց կնքէ ։ *Որ ձգեաց զերկինս միայն. և շրջի՝ ՚ի 8 վերայ ծովու իբրև յատակի ։ *Որ ա- 9 րարն զբազմաստեղսն՝ և զգիշերաւարսն՝ և զսայլն՝ և զշտեմարանս հարաւոյ ։ *Որ առնէ զմեծամեծս՝ և զան- 10 քննինս՝ և զփառաւորս՝ և զհրաշակերտս՝ որոց ոչ գոյ թիւ ։ *Եթէ վերասցի 11 առ քան զիս. ոչ տեսից. և եթէ անցցէ առ ինև, ոչ այնպէս գիտացից ։ *Իսկ ե- 12 թէ սատակեսցէ, ո՞ դարձուսցէ. կամ ո՞վ ասիցէ ցնա. թէ զի՞նչ արարեր ։ *Զի նա դարձաւ ՚ի բարկութէ. և 13 ՚ի նմանէ սասանեցան կէտք՝ որք ՚ի ներքոյ երկնից ։ *Ապա եթէ լուիցէ ինձ՝ 14 կամ իրաւացուցանիցէ զբանս իմ ։ *Եթէ իցեմ արդար, ո՛չ լուիցէ ինձ. 15 և զդատաստան նորա աղաչեցից ։ *Իսկ եթէ կարդացից, և անսասցէ. 16 չհաւատամ, եթէ լուաւ իսկ ինձ ։ *Իսկ ո՛չ միգով սատակիցէ. զի բա- 17 զում են հարուածք. զոր արար ինձ տարապարտուց ։ *Իսկ ո՛չ տայ ինձ 18 հանգչիլ. զի լցոյց զիս դառնութե̃ ։ *Քանզի հզօր է՝ բռնանայ. իսկ արդ 19 ո՞վ է, որ դատաստանի նորա կայցէ հակառակ ։ *Իսկ եթէ իցեմ և ես արդար. 20 սակայն բերան իմ ամպարշտեսցէ. և եթէ իցեմ անարատ, կամակոր գտանիցիմ ։ *Զի եթէ ամպարշտիցի անձն 21 իմ, ոչ գիտեմ. բայց զի բառնին յինէն կեանք իմ ։ *Վասն որոյ ասացի. 22 թէ զմեծն և զհզօրն կորուսանէ բարկութի ։ *Զի չարք յանհնարին մա- 23 հու. այլ արդարք ծաղր լինին ։ *Զի մատնին ՚ի ձեռս ամպարշտի. զե- 24 րեսս դատաւորաց նորա ծածկեսցէ. և եթէ ոչ նա է. ո՞վ իցէ ։ *Բայց իմ 25 կեանք թեթևագոյնք են քան զսուրհանդակ. փախեան, և ոչ երևեցան ։

26 *Իսկ կամ թէ իցեն նաւաց հետք ճանապարհի. և կամ արծուոյ թռուցելոյ՝ 27 որ խնդրեսցէ զկերակուր ։ *Եթէ ասիցեմ՝ թէ խօսեցայց, մոռանամ. զերեսս ՚ի վայր արկեալ հեծեծեցից ։ 28 *Շարժեալ եմ ամ̃ անդամօք իմովք. գիտեմ՝ զի անարատ զիս ոչ թո- 29 ղուցուս ։ *Որովհետև ամպարշտեմ՝ 30 ընդէ՞ր ոչ մեռայ ։ *Եթէ լուացայց ձեամբ. և սրբեցայց ձեռամբ սրբեցից 31 լով ։ *Սաստկացեալ աղտով էներկ զիս. զազրացոյց զիս պատմուճան իմ ։ 32 *Զի ո՛չ ես իբրև զիս մարդ՝ ընդ ո- րում դատեցայց. եթէ հասարակ ե- 33 կեսցուք ՚ի դատաստան ։ *Իսկ յան- կարծ գոյր միջնորդ. և յանդիմանէր՝ և 34 լսէր ՚ի մէջ երկոցունց ։ *Ի բաց արասցէ յինէն զգաւազան. և ահ նորա զիս 35 մի՛ զարհուրեցուսցէ ։ *Իսկ մի՛ երկեայց, այլ խօսեցայց՝ նաև ոչ այնպէս գիտեմ ։

## Գլ. Ժ.

1 Աշխատեալ անձամբ իմով հեծեծելով հառաչից ՚ի նա զբանս իմ ։ խօսեցայց դառնութե̃ անձին թախ- 2 ծեալ ։ *Իսկ ասացից՝ Տր̃ մի՛ ուսուցաներ զիս ամպարշտել. և ընդէ՞ր այսպէս 3 դատեցեր զիս ։ *Կամ թէ բարւո՞ք թուիցի քեզ՝ թէ անիրաւեցից ։ զի մերժեցեր զգործս ձեռաց քոց. և ՚ի խորհուրդս ամպարշտաց հայեցար ։ 4 *Մի թէ որպ̃ հայիցի այր, հայիցիս. կամ որպ̃ տեսանիցէ մարդ, տեսանի- 5 ցես ։ *Կամ թէ ամք քո իբրև զառն ։ 6 *Զի վերստին խնդրիցես զանօրէնու- 7 թիս իմ. և զմեղս իմ քննեսցես ։ *Գի- տես՝ զի ոչ ամպարշտեցայ. այլ ո՞վ է, 8 որ ՚ի ձեռաց քոց հանիցէ ։ *Ձեռք քո արարին զիս. և ստեղծին. և ապա շրջե- 9 ցար՝ և հարեր զիս ։ *Յիշեա՛ զի կաւ ստեղծեր զիս. և յերկիր միւսանգամ 10 դարձուցանես զիս ։ *Կամ թէ ո՞չ իբրև զկաթն կթեցեր զիս. և մածու- 11 ցեր զիս իբրև զպանիր ։ *Մորթ և միս զգեցուցեր ինձ. ոսկերօք և ջլօք հա- 12 նար զիս ։ *Զկեանս և զողորմութիւն եդեր ՚ի վե̃ իմ. այցելութի քո պահեաց 13 զոգի իմ ։ *Զայս ամ̃ ունիս ՚ի քեզ. գիտեմ. զի ամենայնի կարող ես ։ և 14 ոչինչ տկարանայ քեզ ։ *Եթէ և մե- ղանչեմ, պահես զիս. և յանօրէնութէ 15 անարատ ո՛չ արարեր զիս ։ *Եթէ ամ- պարշտեցայց՝ վա՛յ է ինձ. և եթէ ար- դարացայց. ո՛չ կարեմ հայիլ ՚ի վեր. զի 16 լի եմ անարգանօք ։ *Որսացեալ եմ իբրև առիւծ ՚ի սպանումն. դարձեալ կրկնեալ չարաչար սատակես զիս ։ 17 *Նորոգես ՚ի վե̃ իմ զհարուածս իմ. բար-

բարկութիւն մեծաւ ձեռնարկեր յիս. և ածեր 'ի վերայ իմ հէն: 18 *Ընդէ՞ր հաներ զիս յորովայնէ. և ոչ անդէն մեռայ. և ական չէր տեսեալ զիս: 19 *Այլ իբրև զչեղեալ լինէի. ընդէ՞ր յարգանդէ 'ի գերեզման ոչ վճարեցայ: 20 *Այլ միթէ ոչ սակաւ իցէ ժամանակ կենաց իմոց. թո՛յլ տուր ինձ սակաւ մի հանգչել: 21 *Մինչև երթեալ իցեմ, ուստի ոչ դառնայցեմ յերկիր խաւարին և մթին: 22 *Յերկիր աղջամղջին յաւիտենական՝ ուր ոչ գոյ լոյս. և ոչ տեսանել զկեանս մարդկան:

## ԳԼ. ԺԱ.

1 Արձնեալ անդրէն Սոփարայ Մինեցւոյ՝ ասէ:

2 Որ շատ խօսի, ապաքէն լուա՛ նմին և լուիցէ. կամ որ խօսողն իցէ, կարիցէ՞ բանիւք արդարանալ: 3 *Օրհնեալ է ծնունդ կանանց սակաւակեաց. մի՛ զբաղում բանիւք անկանիր: զի ո՛չ գոյ՝ որ տայցէ զպատասխանի: 4 *Մի՛ ասեր թէ սուրբ եմ գործով. և անարատ առաջի Տն: 5 *Այլ թէ զի՞արդ Տր խօսեսցի ընդ քեզ: և բացցէ զշրթունս իւր ընդ քեզ: 6 *Ապա պատմեսցէ քեզ զզօրութիւն իմաստութեան. զի կրկին եղիցի քան զքոյն. և ապա գիտասցես՝ թէ արժանի, ըստ որոց մեղարն, էանց ընդ քեզ 'ի Տէ: 7 *Եթէ զհետս Տն գտանիցես. կամ 'ի վերջինսն հասանիցես՝ զոր արար ամենակալն: 8 *Բարձր են երկինք՝ և զի՞ գործեսցես: խորք են դժոխք՝ և դու զի՞ խելամտեսցես: 9 *Երկայն է չափ երկրի. լայն է ծով: 10 *Այլ եթէ տապալեսցէ զամ. ո՞վ ասասցէ նմա՝ թէ զի՞նչ գործեցեր: 11 *Ինքն գիտէ զգործս անօրինաց: տեսեալ զանարժանս ո՛չ արասցէ անտես: 12 *Բայց մարդ 'ի խօսիլ զօղի բանիւք: այր կանանցածին հանգոյն է ցռոյ անապատականի: 13 *Իսկ եթէ դու սուրբ եդեր զսիրտ քո. տարածեա՛ առ նա զձեռս քո: 14 *Ապա եթէ 'ի ձեռին քում է անօրէնութիւն. հեռի՛ արա զայն 'ի քէն. և անիրաւութիւն 'ի յարկի քում մի՛ ագցի: 15 *Ապա ծագեսցին երեսք քո իբրև զջուր յստակ. մերկասցիս զաղտեղութիւն, և ո՛չ երկիցես: 16 *Այլ մոռասցիս զաշխատութիւն իբրև զալիս անցեալ, և ոչ զարհուրեսցիս: 17 *Աղօթք քո իբրև զարուսեակ. 'ի միջօրէի ծագեսցին քեզ կեանք. վստահացեալ լինիցիս՝ զի կայ քեզ յոյս. 'ի հոգոյ և 'ի տառապանաց երևեսցի քեզ խաղաղութիւն: 18 *Հանդարտեսցիս, և ոչք իցէ՝ որ պատերազմիցի ընդ քեզ: 19 *Դարձցին բազումք՝ և աղաչեսցեն զքեզ: փրկութիւն պակասեսցի 'ի նոցանէ: 20 *Օ՛ն յոյս նոցա կորուստ է. ‖աչք ամպարշտաց հալեսցին:

‖Պետ. 26. 16.

## ԳԼ. ԺԲ.

1 Արձնեալ անդրէն Յոբայ՝ ասէ:

2 Արդ և դուք մարդիկք իցէք. կամ ընդ ձեզ վախճանիցի իմաստութիւն: 3 *‖Այլ իմ սիրտ իբրև զձերդ է: 4 *Օ՛ն այր արդար և անարատ եղէ 'ի կատականս: 5 *'Ի ժամանակ սահմանեալ պատրաստեցաւ՝ կործանեալ յօտարս: զտունս իւր եւես աւերեալ յանօրինաց: 6 *Սակայն մի՛ ոք՝ որ չար իցէ՝ յուսասցի անպարտ լինել: ամ որ միանգամ բարկացուցանեն զՏր. եթէ ո՞չ լինիցի նոցա խնդիրք: 7 *Բայց ա՛րդ հա՛րց չորքոտանիս՝ եթէ ասիցեն քեզ: և թռչնոց երկնից՝ և ցուցցեն քեզ: 8 *Խօսեաց երկրի, եթէ խելամուտ արասցէ զքեզ. և կամ պատմեսցեն 9 քեզ ձկունք ծովու: *Ո՞վ է՝ որ ոչ գիտաց այսու ամենայնիւ. եթէ ձեռն 10 Տն արար զայս: *Այլ եթէ ո՛չ 'ի ձեռին նորա իցէ շունչ ամ կենդանեաց: 11 և ոգի ամ մարդոյ: *‖Օ՛ն միտք զբանս քննեն. և քիմք զկերակուրս ճաշակեն: 12 *Բազում ժամանակաւ իմաստութիւն. և բազում կեանս հանճար: 13 *'Ի նմանէ է իմաստութիւն. և զօրութիւն. նորա է խորհուրդ և հանճար: 14 *‖Եթէ կործանեսցէ՝ ո՞ շինեսցէ. և եթէ փակեսցէ ընդդէմ մարդկան. ո՞ 15 բանայցէ: *Եթէ արգելցէ զջուր՝ ցամաքեցուցանէ զերկիր: և եթէ թողուցէ՝ կորուսցէ զնա կործանեալ: 16 *'Ի նմանէ է զօրութիւն և ուժգնութիւն. նր է հանճար և իմաստութիւն: 17 *Ածէ զխորհրդականս 'ի գերութիւն. և զդատաւորս երկրի յիմարեցուցանէ: 18 *Նստուցանէ զթագաւորս յաթոռս. 19 և ածէ զգօտի ընդ մէջ նց: *Առաքէ զքահանայս 'ի գերութիւն. և զզօրաւորս 20 երկրի կործանեաց: *Փոփոխէ զշրթունս հաւատարմաց. և զհանճար 21 ծերոց ծանեաւ: *Այլ հեղու անարգութիւն 'ի վր իշխանաց. և զխոնարհս 22 բժշկեաց: *Յայտնէ զխորս խաւարի. և եհան 'ի լոյս զստուերս մահու: 23 *Մոլորեցուցանէ զազգս՝ և կորուսանէ զնս. սփռէ զազգս՝ և առաջնորդէ 24 նց: *Փոփոխէ զսիրտս իշխանաց երկրի. մոլորեցոյց զնոսա 'ի ճանապարհի՝ 25 զոր ոչ գիտէին: *Շօշափեսցեն զխաւար՝ և ո՛չ զլոյս. մոլորեսցին իբրև զարբեալ:

‖Այր. 20. 2. ‖Այր. 34. 3. ‖Եսայ. 22. 22. Յայտ. 3. 7.

## ԳԼ. ԺԳ.

1 Ահա զայս տեսեալ ակն իմ. և լուաւ ունկն իմ: 2 *Եւ գիտեմ ես՝ որչափ և դուք խելամուտ էք. և չեմ անմտագոյն քան զձեզ: 3 *Բայց սակայն ես ընդ Տն խօսեցայց. յանդիմանեցայց առաջի նորա, եթէ կամեսցի: 4 *Բայց դուք էք բժիշկք մեղանչականք էք. և ողջացուցիչք չարեաց ամենեքեան: 5 *Եղիցի ձեզ համրանալ՝ և համարեալ լիցի ձեզ յիմաստութիւն: 6 *Լուարուք զյանդիմանութիւն բերանոյ իմոյ. և դատաստանի շրթանց իմոց անսացէք: 7 *Ոչ ապաքէն առաջի Տն խօսիցիք. և յանդիման նր զնենգութիւն բարբառիք: 8 *Կամ թէ թանգուցիցէք. զի դուք ամենեքին դատաւորք եղէք: 9 *Զի բարւոք է եթէ քննեսցէ զձեզ. զի եթէ զամ արարեալ յաւելուցուք ՚ի նա: 10 *Ոչինչ սակաւ կշտամբեսցէ զձեզ: և եթէ ՚ի ծածուկ աչառիցէք: 11 *Ոչ ապաքէն արհաւիրք նր զարհուրեցուցանեն զձեզ. անկցի ՚ի վր ձեր: 12 *Եւ գիջեսցին պերճութիւնք ձեր հանգոյն մոխրոյ. և մարմին կաւեղէն: 13 *Կարկեցարուք, զի խօսեցայց. և հանգեայց ՚ի սրտմտութենէ: 14 *Առեալ ըզ մարմինս իմ յատամունս իմ. և զոգի իմ եդից ՚ի ձեռին իմում: 15 *Եթէ արկցէ զձեռն իւր զինև հզօրն. քանզի և սկսեալ իսկ է: եթէ ոչ խօսեցայց՝ և յանդիմանեցայց առաջի նորա: 16 *Եւ այն դիպեսցի ինձ ՚ի փրկութիւն: քանզի ոչ մտցէ առաջի նր նենգութիւն: 17 *Լուարուք՝ լուարուք բանից իմոց. զի պատմեցից ձեզ լսելով: 18 *Զի ահաւասիկ մերձեալ եմ ՚ի դատաստանս իմ. և գիտեմ, զի արդար երևելոց եմ: 19 *Զի ո՞վ է ոսոխն իմ, եկեսցէ: զի՞արդ կարկեցայց՝ և պակասեցայց: 20 *Երկու ինչ պիտոյ են ինձ. և յայնժամ յերեսաց քոց ոչ թաքեայց: 21 *Զձեռն քո ՚ի բաց արա յինէն. և ահ քո մի զարհուրեցուսցէ զիս: 22 *Եւ ապա կոչեսցես զիս՝ և լուայց քեզ. և եթէ խօսեսցիս՝ և ես տաց քեզ պատասխանի: 23 *Քանի՞ ինչ են մեղք՝ և անօրէնութիւնք իմ. ուսո ինձ՝ քանիօն իցեն: 24 *Ընդէ՞ր զերեսս քո թաքուցանես յինէն: համարեցիր զիս քեզ ոսոխ: 25 *Կամ թէ ՚ի հողմաշարժ տերևոյ երկնչիցիս. կամ իբրև հողմավար խոտոյ կայցես ինձ հակառակ: 26 *Զի գրեցեր զինէն չարիս. և արկեր զինև զմեղս մանկութեան: 27 *Եդեր զոտն իմ ՚ի պաշարման: պաշարեցեր զամ զգործս իմ. և յարմատս ոտից իմոց հասեր: 28 *Որ իբրև զտիկ հնացեալ է. կամ թէ իբրև զձորձս ցեցակեր:

## ԳԼ. ԺԴ.

1 Զի այր կանանցածին՝ սակաւակեաց է՝ և լի բարկութեամբ: 2 *Որ իբրև զծաղիկ ծաղկեալ թօթափեցաւ. խոյս ետ իբրև զստուեր՝ և մի կացցէ: 3 *Ոչ ապաքէն և այնմ համար առնիցես. և նմա արարեր մտանել ՚ի դատաստան առաջի քո: 4 *Իսկ արդ ո՞վ իցէ սուրբ յաղտոյ. ոչ և ոչոք. թէ պէտ և միոյ աւուր իցեն կեանք նր ՚ի վր երկրի: 5 *Համարեալ են ամիսք նր առ ՚ի նմանէ. ՚ի ժամանակ եդեր և ոչ անցցէ: 6 *Ի բաց լեր ՚ի նմանէ՝ զի դադարեսցէ. և ամոքեսցէ զկեանս իբրև զվարձկան: 7 *Զի գոյ յոյս ծառոյ. զի թէպէտ և կոտրեսցի, միւսանգամ ծաղկեսցի. և շառաւիղ նորա մի պակասեսցի: 8 *Եթէ ծերասցի յերկրի արմատ նր. և ՚ի քարի վախճանեսցի բուն նր: 9 *Ի հոտոյ ջրոյ ծաղկեսցի. և արասցէ հունձս իբրև նորատունկ: 10 *Բայց այր վախճանեալ գնաց. անկեալ մարդ և ոչ ևս իցէ: 11 *Զի ժամանակաւ անօսրի ծով. և գետ աւերեալ ցամաքեսցէ: 12 *Եւ մարդ ննջեաց՝ և ոչ յարիցէ: մինչև երկինք իցեն ոչ կարկատեսցի. և ոչ զարթիցեն ՚ի քնոյ իւրեանց: 13 *Երանի թէ ՚ի դժոխս պահէիր զիս. և թաքուցանէիր զիս մինչև անցանէր բարկութիւն քո. և ժամանակէիր ինձ ժամանակ. յորում առնէիր ինձ յիշատակ: 14 *Եթէ մեռանիցի մարդ՝ կեցցէ. վախճանեալ զաւուրս կենաց իւրոց: սպասեցից մինչ միւսանգամ լինիմ: 15 *Ապա կոչեսցես զիս. և ես տաց քեզ պատասխանի: զգործս ձեռաց քոց մի մերժեր: 16 *Թուեցեր զգնացս իմ. և մի անցցէ ինչ զքև ՚ի մեղաց իմոց: 17 *Կնքեցեր զանօրէնութիւնս իմ ՚ի քսակի. և նշանակեցեր, եթէ ակամայ ինչ յանցեայ: 18 *Սակայն և լեառն՝ որ փլանելոցն իցէ, փլցի: և վէմ հնասցի ՚ի տեղւոջէ իւրմէ: 19 *Զքարինս ողորկեցին ջուրք. և ողողեցին ջուրք զդաշտս թանձրութեան երկրի. և զակնկալութիւն մարդոյ կորուսեր: 20 *Մերժեցեր զնա իսպառ, և գնաց. հաստատեցեր ՚ի վր նր զերեսս՝ և արձակեցեր: 21 *Թէպէտ և բազում որդիք լինիցին նորա, ոչ գիտէ. և եթէ սակաւք առնիցին, ոչ ճանաչէ: 22 *Այլ մարմինք նորա ախտացան. և ոգի նորա սգացաւ:

Սաղ. 50.4.

## ԳԼ. ԺԵ.

Արկնեալ անդրէն Եղիփազու Թեմնացւոյ՝ ասէ։ 1

Ապաքէն հանճարեղն ոգւով՝ իմաստութ՟ տացէ զպատասխանի։ և լնանիցի աշխատութ՟ որովայնի։ 2
*Յանդիմանել բանիւք՝ որ ոչ իցէ արժան. խօսիւք, որ ոչ իցէ յօգուտ։ 3
*Զորոյ և դու զերկիւղ մերժեցեր. և գումարեցեր առաջի Տ՟ն զայդպիսի բանս։ 4
*Պարտաւորեցար բանիւք բերանոյ քոյ. և ոչ քննեցեր զբանս հզօրաց։ 5
*Կշտամբեսցէ զքեզ քո բերան՝ և ոչ ես։ շրթունք քո հակառակ քեզ վկայեսցեն։ 6
*Իսկ արդ զի՞արդ՝ մի թէ առաջին քան զմարդիկ ծնեալ իցես. կամ յառաջ քան զբլուրս հաստատեցար։ 7
*Կամ զհրաման Տ՟ն լուար։ թէ 'ի քեզ էհաս իմաստութ՟ն։ 8
*Զի՞նչ է, զոր գիտես. և մեք ոչ գիտիցեմք։ կամ զինչ դու իմանայցես՝ և ոչ մեք։ 9
*Նա և 'ի մեզ ծեր և հինաւուրց գոյ. և երիցագոյն քան զհայր քո աւուրբք։ 10 (Սիրաք. 18.8.)
*Սակաւս քան զոր մեղարն, տանջեցար. և առաւել մեծաբանս խօսեցար։ 11
*Ընդէ՞ր յանդգնեցաւ սիրտ քո. կամ ընդէ՞ր լկնեցան աչք քո։ 12
*Զի թափեցեր զբարկութ՟ի առաջի Տ՟ն. և հաներ 'ի բերանոյ քումմէ զբանս այդպիսիս։ 13
Ո՞ք իցէ մարդ. որ եղև անարատ։ կամ ո՞ ոք կանանցածին լինելոց իցէ արդար։ 14
*Զի եթէ սրբոյ ոչ հաւատայ՝ և երկինք ոչ են անարատ առաջի նր։ 15 (Եր. 4.18.)
*Թող թէ այր գարշ և անմր. որ ըմպէ զանօրէնութ՟իս համագոյն ըմպելոյ։ 16
*Պատմեցից քեզ՝ լո՛ւր ինձ. զորինչ տեսի՝ պատմեցից քեզ։ 17
*Զոր իմաստունք ասեն. և ոչ թաքուցին հարց իւրեանց։ 18
*Նոցա միայն տուաւ երկիր. և ոչ եկն օտարածին 'ի վ՟ր նց։ 19
*Ամ կեանք ամպարշտի հոգովք. ամք թուով տուեալ են հզօրի։ 20
*Նա՛ ահ նր յականջս նր։ յորժամ համարիցի թէ 'ի խաղաղութ՟ե իցէ՝ եկեսցէ կործանումն նր։ 21
*Մի հաւատասցէ դառնալ 'ի խաւարէ. զի հրամայեալ է արդէն 'ի ձեռս երկաթոյ։ 22
*Կարգեալ է 'ի կերակուր անգեղաց. գիտէ 'ի միտս իւր. թէ մնալոց է 'ի կործանումն. օրն մթին զարհուրեցուսցէ զնա։ 23
*Նեղութ՟ի և նեղութ՟ի հասցէ նմա։ իբրև զօրավար յառաջակաց կործանեալ։ 24
*Զի ամբարձ զձեռս ընդդէմ Տ՟ն. և առաջի ամենակալին ընդվզեցաւ։ 25
*Ընթացաւ առաջի նր հպարտութ՟բ՝ թանձրութ՟բ վահանի իւրոյ։ 26
*Զի ծածկեաց զերեսս իւր ճարպով իւրով. (Ճարպով / Խարով) 27 և արար երկայրի յաղգեր իւրում։
28 *Բնակեսցի 'ի քաղաքս աւերակս. մտցէ 'ի տունս անշէնս. զոր նոքա պատրաստեցին՝ այլք տարցին։
29 *Մի՛ մեծասցի, և մի՛ մնասցեն ինչք նորա. և մի՛ արկցէ յերկիր զստուեր։
30 *Նա՛ մի՛ ապրեսցի 'ի խաւարէ. զբողբոջ նորա թառամեցուսցէ հողմ. թօթափեսցի ծաղիկ նր։
31 *Մի՛ հաւատասցէ՝ եթէ հանդարտիցի. սնոտիք պատահեսցին նմա։
32 *Կորուստ նր տարաժամ հարցի. և շառաւիղ նր մի՛ բղխեսցի։
33 *Իբրև զխակակութ՟ն տարաժամ կթեսցի. թօթափեսցի իբրև զծաղիկ ձիթենւոյ։
34 *Զի վկայութիւն ամպարշտի մահ է. հուր այրեսցէ զտունս կաշառառուաց։
35 *Յղասցի զցաւս. դիպեսցին նմա սնոտիք. յորովայն նորա կրեսցէ զնենգութիւն։ (Եսայ. 59.4. Սաղմ. 7.15.)

## ԳԼ. ԺԶ.

1 Արկնեալ անդրէն Յոբայ՝ ասէ։

2 Լուեալ այդպիսի ինչ բազում։ մխիթարիչք չարեաց ամենեքին։
3 *Իսկ արդ՝ մի թէ կարգ ինչ իցէ բանից հողմոյ. կամ թէ թախանձիցէ ոք զքեզ. զի տացես պատասխանի։
4 *Նա՛ ես ընդ ձեզ խօսեցայց. եթէ հնազանդ դիք անձն ձեր ըստ իմում անձին։
5 *Արդ զկծեցուցից և ես զձեզ բանիւք. շարժեցից և ես իբրև զձեզ զգլուխ իմ։
6 *Թերևս լիցի զօրութ՟ի 'ի բերան իմ. զշարժել շրթանց իմոց ո՛չ խնայեցից։
7 *Զի եթէ խօսեցայց, ոչ փարատեսցին ցաւք վիրաց իմոց. և եթէ լռիցեմ, նուազագոյն ինչ վիրաւորիցիմ։
8 *Արդ յժմ կոտորեալ արար զիս. փտեալ՝ ընդարմացեալ։
9 *Նա՛ բուռն հարեալ զինէն՝ 'ի վկայութ՟ի եղեր ինձ. (Եղև) և յարոյց ինձ զստութ՟ի իմ. քանզի արար ինձ ընդդէմ պատասխանի։
10 *Բարկութ՟բ վարեալ կործանեաց զիս. կրճտեաց 'ի վ՟ր իմ զատամունս. նետք հինից նր տեղացին 'ի վ՟ր իմ. տիգօք աչաց խաղաց 'ի վ՟ր իմ։
11 *Արդ արագ էհար զիս 'ի ծունգս. միանգամայն ասպատակեցին 'ի վ՟ր իմ։
12 *Բա՛ն զի մատնեաց զիս Տ՟ր 'ի ձեռս անիրաւի՝ և 'ի մէջ ամպարշտաց ընկէց զիս։
13 *Մինչդեռ 'ի խաղաղութ՟ե էի, քայքայեաց զիս. առեալ զվարսից իմոց փետտեաց զիս. կացոյց զիս իբրև զդէտ։
14 *Պատեցին զիս տէգք. յանխնայ խոցոտեցին զերիկամունս իմ. էհեղ յերկիր զմաղձ իմ։
15 *Կործանեցին զիս հարուածովք 'ի վերայ հարուածոց. յարձակեցան 'ի վ՟ր իմ զօրաւորք։
16 *Կարեցին

քուրձ ընդ մորթ իմ․ զօրութի՟ն իմ յեր
կիր շիջաւ ։ *Խարշեցաւ փոր իմ 'ի 17
լալոյ․ և 'ի վերայ արտևանաց իմոց
ստուերք մահու ։ *Անիրաւութիւն 18
ինչ ոչ էր 'ի ձեռս իմում․ աղօթք իմ
ս՟ր էին ։ *Երկիր մի՛ ծածկեր զարիւն 19
մարմնոյ իմոյ․ և մի՛ լիցի տեղի աղաղա
կի իմոյ ։ *Եւ արդ՝ ահա յերկինս է 20
վկայ իմ․ և իրաւագէտն իմ 'ի բար
ձունս ։ *Հասցէն խնդրուածք իմ 21
առ Տ՟ր․ և յանդիմանն՟ր կաթեսցուսցէ
ակն իմ ։ *Եղիցի յանդիմանութիւն առն 22
առաջի Տ՟ն․ և որդւոյ մարդոյ առ ըն
կերի իւրում ։ *Ամք թուով հասին․ 23
ընդ ճանապարհ անդարձ գնացից ։

## Գ. Լ: Ժ. Է.

Հողմավար կորնչիմ․ կարօտիմ գե 1
րեզմանի․ և ոչ հասանիմ ։ *Տառա 2
պիմ աշխատեալ՝ և զի՞նչ գործեցից ։
գողացան օտարք զստացուածս իմ ։
*Ո՞վ է նա՝ ո՟ր ձեռս իմում կապեսցի ։ 3
*Զի զսիրտ իւրեանց թագուցին յի 4
մաստութենէ․ վասն այսորիկ մի՛ բարձրա
ցուսցէ զնս ։ *'Ի միասին պատմեսցէ 5
զչարութիւն ։ աչք իմ 'ի վ՟ր որդւոց հա
լեցան ։ *Եդեր զիս բամբասանս ազ 6
գաց․ եղէ նոցա ծաղր ։ *Շլացան 'ի 7
բարկութենէ աչք իմ․ պաշարեալ եմ
մեծապէս յամենեցունց ։ *Զարմանք 8
կալան զճշմարիտս 'ի վ՟ր այսոցիկ ։ ար
դար 'ի վ՟ր անօրինի յարիցէ ։ *Կալցի 9
հաւատարիմն զիւր ճանապարհ ։ ս՟րն
ձեռօք առցէ զքաջալերութիւն ։ *Բայց 10
արդ՝ ա՛ղէ դուք եկա՛յք յարեցարուք
ամենեքեան․ քանզի ո՛չ գտանեմ 'ի
ձեզ ճշմարտութիւն ։ *Աւուրք իմ 11
անցին շառաւով․ պայթեցին երակք
սրտի իմոյ ։ *Զգիշեր տիւ եդին․ լոյս 12
մերձեալ յերեսաց խաւարի ։
*Զի եթէ համբերից՝ դժոխք են 13
տուն իմ ։ 'ի միգի տարածեալ են ան
կողինք իմ ։ *Զմահ կոչեցի ինձ հայր․ 14
մայր և քոյր ինձ զեռն ։ *Արդ՝ ո՞ւր է 15
յոյս իմ․ կամ թէ զբարութիւնս իմ տե
սանիցեմ ։ *Կամ թէ ընդ ի՞ս իսկ 'ի 16
դժոխս իջանիցեն․ կամ թէ միանգա
մայն 'ի հող իջանիցեմք ։

## Գ. Լ: Ժ. Ը.

Արկնեալ անդրէն Բաղդատայ Սօքեցւոյ՝ ասէ ։ 1

Մինչև յե՞րբ ոչ դադարիցես․ հան 2
դարտեա՛ց, զի և մեք խօսիցուք ։
*Ընդէ՞ր իբրև զչորքոտանիս լռեալ 3
եմք առաջի քո ։ *Եւ՛ դու մխեալ ես 4
բարկութեամբ ։ իսկ արդ՝ եթէ դու մեռա
նիցիս՝ անշէն մնայցէ առ 'ի ներքոյ երկ
նից ։ կամ թէ և լերինք 'ի հիմանէ տա
5 պալիցին ։ *Եւ՛ լոյս ամպարշտաց շի
ջանիցի․ և ո՛չ պատահիցի նոցա ։
6 *Եւ՛ լոյս նր խաւար 'ի յարկի իւրում․
7 և ճրագ 'ի վ՟ր շիջցի ։ *Որսասցին յե
տինք զինչս նր․ խափալեալ են խոր հուրդք
8 նր ։ *Ընկեցի ոտն նորա յորոգայթ․ և
9 շաղախեսցի 'ի թակարդի ։ *Եկեսցեն
'ի վ՟ր նր որոգայթք․ զօրացուսցէ 'ի վ՟ր
10 նր զծարաւիս ։ *Զի թաքուցեալ են
յերկրի տոռունք նր․ և կալանք նորա
11 'ի վ՟ր շաւղաց ։ *Սատակեսցեն զնա
ցաւք շուրջանակի բազումք զոտիւք նր
12 պատեսցին ։ *'Ի նեղութեան սովու պատ
րաստեալ է նմա կործանումն ահագին․
13 կերիցեն նր կինք ոտից նր ։ *Կերիցէ
14 մահ զգեղեցկութիւն նր ։ *Մ արեսցի
բժշկութի՟ն 'ի յարկաց նր․ հասցի նմա տագ
15 նապաս պատուհաս թագաւորի ։ *Բնա
կեսցի 'ի յարկի նր 'ի գիշերի իւրում․
ցրեսցին վայելչութիւնք նր ծծմբով ։
16 *'Ի ներքուստ արմատք նր ցամաքես
ցին․ և 'ի վերուստ անկցին հունձք նր ։
17 *Յիշատակ նր կորիցէ յերկրէ․ և ոչ
գտցի անուն նորա առ երեսօք արտաք
18 նովք ։ *Մերժեսցեն զնա 'ի լուսոյ 'ի
խաւար․ և մի՛ եղիցի նմա ծանօթ 'ի ժո
19 ղովրդեան իւրում ։ *Մի՛ լիցի ապ
րեալ 'ի ներքոյ երկնից տուն նորա․ այլ
20 'ի նորայսն կացցեն օտարք ։ *Հեծե
ծեսցեն 'ի վ՟ր նր յետինք ։ զառաջինս
21 կալան զարմանք ։ *Թէ այսք են տունք
անիրաւաց․ և այս տեղի այնոցիկ․ որք
զՏ՟ր ոչ ճանաչիցեն ։

## Գ. Լ: Ժ. Թ.

1 Արկնեալ անդրէն յօբայ՝ ասէ ։

2 Մինչև ցե՞րբ աշխատ առնէք զանձն
իմ․ և խախտէք զիս բանիւք ։
3 *Բայց գիտասջիք․ զի Տ՟ր արար ընդ իս
այսպէս․ բամբասէք զիս՝ և ո՛չ ամաչէք
4 յարձակեալ 'ի վ՟ր իմ ։ *Այո՛ արդարև
ես մոլորեցայ ։ և յիս հանգուցեալ է
մոլորութի՟ն․ խօսիլ բան զոր չէ արժան․ և
բանք իմ մոլորեալք են՝ և ո՛չ են 'ի դէպ
5 ժամանակի ։ *Թողցուք զայդ․ որ յիմ
վ՟ր մեծաբանեալ էք․ և յարձակեալ
էք 'ի վ՟ր իմ․ և յարձակեալ էք նախա
6 տանօք ։ *Արդ գիտասջիք՝ զի Տ՟ր է
որ խռովեաց․ և ամուրս 'ի վ՟ր իմ բար
7 ձրացոյց․ *Ահա ծաղր լինիմ նախա
տանօք․ և ո՛չ խօսեցայց․ աղաղակեցից
և ո՛չ ուստեք իցէ դատաստան ։
8 *Շուրջ պատեալ եմ․ և ոչ կարացից
անցանել․ ընդ 'ի վ՟ր երեսաց իմոց խաւար․
9 *Մերկացոյց յինէն զփառս իմ․ վերա
10 ցոյց զպսակն 'ի գլխոյ իմմէ ։ *Պարու
րեաց

րեաց շուրջ զինև՝ և գնացի․ էհատ իբրև զծառ զյոյս իմ։ 11 * Եւ չարաչար բարկութք վարեցաւ ընդ իս․ համարեցաւ զիս իբրև զթշնամի։ 12 * Միանգամայն հասին 'ի վր իմ հէնք նր․ զճանապարհս իմ պատեցին դարանակալք։ 13 * Հեռի եղեն յինէն եղբարք իմ․ ծանեան զօտարս քան զիս։ 14 * Բարեկամք իմ անողորմք եղեն․ անգոսնեցին զիս մերձաւորք իմ․ և ծանօթք իմ մոռացան զանուն իմ։ 15 * Դրացիք տան իմոյ․ և աղախնայք իմ՝ օտար համարեցան զիս․ այլազգի թուէի առաջի նոցա։ 16 * Զծառայ իմ կոչէի՝ և ոչ լուաւ․ բերան իմ աղաչէր։ 17 * Եւ աղերսէի զկին իմ, կոչէի ողոքանօք զորդիս հարճից իմոց։ 18 * Եւ նք յաւիտեան ուրացան զիս․ յորժամ յառնեմ, բամբասեն զիս։ 19 * Գարշեցան յինէն ծանօթք իմ․ և զորս ես սիրէի, յարեան 'ի վր իմ։ 20 * Փտեցան մարմինք իմ ընդ մորթով իմով․ և ոսկերս իմ ունիմ յատամունս։ 21 * Ողորմեցարուք ինձ՝ ողորմեցարուք՝ ո՛ բարեկամք․ զի ձեռն Տն մերձեցաւ յիս։ 22 * Ընդէ՞ր հալածէք դուք զիս իբրև զՏր․ և մարմնովք իմովք չիցէ՞ք յագեալ։ 23 * Ո՞ տայր ինձ գրել զբանս իմ, և հանել զսոսա 'ի մատեան 'ի յաւիտեան։ 24 * Գրչաւ երկաթեաւ 'ի կապարի կամ 'ի վէմս քանդակել։ 25 * Քանզի գիտեմ․ զի մշտնջենաւոր է՝ որ լուծանելոցն է զիս․ յերկրէ յարուցանել։ 26 * Զմորթ իմ որ կրեաց զայս՝ 'ի Տէ վճարեցաւ ինձ այս։ 27 * Զոր ես անձին իմում իրազգէտ եմ, զոր ակն իմ տեսեալ՝ և ոչ այլ ոք․ ամ ինչ վախճանեցաւ 'ի ծոց իմ։ 28 * Ապա եթէ ասիցէք․ զի՞նչ խօսեսցուք առաջի նր․ և արմատ բանից գտցուք 'ի նմա։ 29 * Երկերուք և դուք 'ի ծածկելոյ․ զի բարկութի 'ի վր անօրինաց եկեսցէ․ և ապա գիտասցեն թէ ուր է նիւթ նոցա։

## ԳԼ․ Ի․

1 Առնեալ անդրէն Սօփարայ մինեցւոյ՝ ասէ։

2 Ո՛չ այդպէս կարծէի խօսել քեզ ընդդէմ մեր զայդ․ ո՛չ ապաքէն իմաստնագոյնք իցէք քան զիս։ 3 * Խրատու ակնածութե իմոյ լուայց․ և ոգի յիմաստութե տրասցէ ինձ պատասխանի։ 4 * Մի թէ զայդ յայսմ հետէ գիտացեր․ այլ յորմէ հետէ եդաւ մարդ 'ի վր երկրի։ 5 * Զի ուրախութի ամպարշտաց բեկումն անհնարին․ և խնդութի անօրինաց կորուստ։ 6 * Եթէ ելանիցեն յերկինս պատարագք նր՝ և գլուխք նր յամպս մերձեսցին։ 7 * Յորժամ համարիցի, թէ հաստատեալ իցէ․ յայնժամ իսպառ կորիցէ․ և որք գիտէին զնա, ասասցեն՝ թէ ուր է։ 8 * Իբրև զերազ թռուցեալ ոչ գտցի․ թռեաւ իբրև զտեսիլ գիշերական։ 9 * Ակն՝ որ հայեցաւ 'ի նա՝ ոչ յաւելցի․ և ոչ ծանիցէ զնա տեղի իւր։ 10 * Զորդիս նր սատակեսցեն վատթարք․ 11 ձեռք նր բորբոքեսցին ցաւօք։ * Ոսկերք նորա յագեցան մանկութե նր․ և ընդ նմին 'ի հող ննջեսցեն։ 12 * Եթէ քաղցրասցի 'ի բերան նր չարութի․ թաքուսցէ զայն 'ի ներքոյ լեզուի իւրոյ։ 13 * Մի խնայեսցէ 'ի նա․ և մի թողցէ զնա․ և ժողովեսցէ զնա 'ի մէջ կոկորդի իւրոյ։ 14 * Եւ մի կարասցէ օգնել անձին իւրում, 15 լեղի իժի 'ի փորի իւրում։ * Մեծութի անիրաւութե ժողովեալ փխեսցի․ 'ի տանէ նորա կորզեսցէ զնա 16 հրեշտակ։ * Զսրտմտութի վիշապաց ծծեսցէ․ սպանցէ զնա լեզու օձի։ 17 * Մի տեսցէ զկիթ արօտականաց․ 18 և մի զարօտս մեղու և կոգւոյ։ * Ի զուր և 'ի տարապարտուց վաստակեցաւ 'ի մեծութի․ ուստի ոչ ճաշակեսցէ՝ իբրև զխիստ ինչ զանծամ և զանկուլ։ 19 * Զի զբազում տկարաց տունս խորտակեաց․ և զյարկս յափշտակեաց՝ և 20 ոչ հաստատեաց։ * ‖Չիք փրկութի ստացուածոց նորա․ 'ի ցանկութե իւրում 21 ոչ ապրեսցի։ * Եւ մի լիցին մթերք կերակրոց նորա․ վս այսորիկ մի ծաղ- 22 կեսցին բարութիւնք նր։ * Յորժամ համարիցի, եթէ ահա լցեալ իցէ՝ նեղեսցի․ ամ տագնապ հասցի 'ի վերայ 23 նորա։ * Թէ զիարդ լնուցի որովայն նորա․ առաքեսցէ 'ի վերայ նորա զսրտմտութի բարկութե․ արկցէ զնովաւ 24 ցաւս։ * Եւ մի ապրեսցի 'ի ձեռանէ երկաթոյ․ խոցոտեսցէ զնա աղեղն 25 պղնձի։ * Անցցէ ընդ մարմինս նորա նետ․ աստեղք շրջեսցին 'ի յարկս նորա՝ 26 արհաւիրք 'ի վերայ նորա։ * Ամենայն խաւար նմա մնասցէ․ կերիցէ զնա հուր անշէջ․ չարչարեսցէ եկամուտ զտուն 27 նորա։ * Յայտնեսցեն երկինք զանօրէնութիս նորա․ յարիցէ 'ի վերայ նորա 28 երկիր։ * Քակտեսցէ կորուստ զտուն նորա իսպառ․ հասցի 'ի վերայ նորա 29 օր բարկութե։ * Այս բաժին է մարդոյ ամպարշտի առ 'ի Տէ․ և այս ստացուած ընչից նորա՝ յայցելութի։

‖Յոբ. 5. 9.

յայցելութե

## ԳԼ․ ԻԱ․

1 Առնեալ անդրէն յօբայ՝ ասէ։

2 Լուարուք՝ լուարուք բանից իմոց․ երանի թէ մի լինէր 'ի ձէնջ այդ 3 մխիթարութի։ * Ներեցէք ինձ և ես խօ-

խօսեցայց: Եթէ ոչ այպանիցէք զբանիւք իմովք: 4 *Իսկ արդ՝ չէ իմ կշտամբանքս 'ի մարդկանէ ինչ իցեն. և կամ ընդէ՞ր ոչ բարկանայցեմ: 5 *Հայեցեալ ընդ իս զարմանայք՝ եդեալ ձեռն 'ի ծնօտի: 6 *Եթէ յուշ լինիցի ինձ, տագնապեցայց. զի ունին ցաւք զմարմինս իմ: 7 *Ընդէ՞ր բնաւ ամպարիշտք կենդանիք իցեն հնացեալք, և 'ի մեծութեան են: 8 *Սերմանք նոցա ըստ միտս. և որդիք նոցա առաջի աչաց: 9 *Տունք նոցա յաջողեալք. և երկիւղ՝ և ոչ ուստեք. և տանջանք 'ի Տեառնէ չեն 'ի վերայ նոցա: 10 *Արջառ նոցա ոչ սխալեցաւ 'ի ծնընդենէ. ապրեցաւ յղի նոցա՝ և ոչ վրիպեցաւ: 11 *Ա՛յ կան իբրև զխաշինս յաւիտենականս. մանկունք նոցա խաղան առաջի: 12 *Առեալ սաղմոսարան և քնար. և ուրախ լինին ձայնիւ երգոց: 13 *Կատարեցին 'ի բարութեան զկեանս իւրեանց՝ հանգստեամբ ննջեցին 'ի դժոխս: 14 *Ա՛յ ասէ ցՏր՝ 'ի բաց կաց յինէն. զճանապարհս քո ճանաչել ոչ կամիմ: 15 *Զի՞նչ շահ է՝ զի ծառայեսցուք նմա. և զի՞նչ օգուտ՝ զի հանդիպեսցուք նմա: 16 *'Ի ձեռս նոցա էին բարութիւնք. և 'ի գործս ամպարշտաց ոչ հայի: 17 *Սակայն և ճրագ ամպարշտաց շիջցի՝ եկեսցէ 'ի վերայ նոցա կործանումն. երկունք կալցին զնոսա 'ի բարկութենէ: 18 *Եղիցին իբրև զյարդ առաջի հողմոյ՝ կամ իբրև զփոշի զոր տարաւ մրրիկ: 19 *Սպառեսցեն զորդիս ինչք նորա. հատուսցէ նմա, և ծանիցէ: 20 *Տեսցեն աչք նորա զսպանումն իւր. և 'ի Տէ մի՛ ապրեսցի: 21 *Զի կամք նորա 'ի տան իւրում ընդ իւր. և թիւ ամսոց նորա բաժանեսցին: 22 *Ո՞չ ապաքէն Տր է. որ ուսուցանէ զհանճար և զգիտութիւն. զի ինքն քննէ զիմաստունս: 23 *Այն մեռցի 'ի սաստկութեան անզգամութեան իւրում. ամենևին բարեկեցիկ և յաջողեալն: 24 *Փոր նորա լի՛ է ճարպով. ուղեղ նորա շրջեսցի: 25 *Եւ սա վախճանեսցի 'ի դառնութենէ անձին՝ ոչ ինչ կերեալ 'ի բարութենէ: 26 *Առհասարակ ննջեսցեն յերկրի. երբ ծածկեսցէ զնոսա: 27 *Արդ գիտեմ. զի յանդգնութեամբ հասեալ էք 'ի վերայ իմ: 28 *Արդ ասիցէք՝ թէ ո՞ւր է տուն իշխանին. և ո՞ւր է յարկ բնակութեան ամպարշտաց: 29 *Հարցէք զանցաւորս ճանապարհի. և զնշանս նոցա մի՛ օտարացուցանէք: 30 *Զի յօր կորստեան ատիպի չարն. յօր բարկութեան իւրոյ վարեսցի: 31 *Ո՛ պատմիցէ յանդիման նորա զճանապարհս նորա. և զորինչ ինքն գործեաց՝ ո՛ հատուսցէ նմա: 32 *Ա՛յ ինքն 'ի գերեզմանս գնաց. և 'ի տապանի տքնեցաւ: 33 *Քաղցրացան նմա խիճք հեղեղատի. և զհետ նորա ամենայն մարդ գնասցէ. և յառաջ քան զնա անթիւք: 34 *Ա՛յ զիա՞րդ մխիթարեցիք զիս սնոտեօք. և ինձ ձեռօք դադարելն ոչինչ է:

Երեմ. 12.1. Աբակ. 1.3.և 13. — Մաղա. 3. 14.

## ԳԼ. ԻԲ.

1 Սկսեալ անդրէն Եղիփազու Թեմնացւոյ առն:

2 Ո՞չ ապաքէն Տէր է՝ որ ուսուցանէ զիմաստութիւն և զհանճար: 3 *Իսկ արդ՝ զի՞ փոյթ է Տն, եթէ դու էիր անարատ գործօք քովք՝ կամ զի՞նչ օգուտ, թէ պարզեսցես զճանապարհս քո: 4 *Կամ համարեալ ինչ զքեզ յանդիմանեսցէ զքեզ. և մտանիցէ ընդ քեզ 'ի դատաստան: 5 *Ո՞չ ապաքէն չարութիւն քո բազում է. և անթիւք են մեղք քո: 6 *Գրաւեցեր դու զեղբարս քո տարապարտուց. և զզգեստ մերկոց զերծեր: 7 *Ջուր ծարաւեաց ո՛չ արբուցեր. այլ և զհաց քաղցելոց հատեր: 8 *Ակն առեր երեսաց ումանց. և բնակեցուցեր զնոսա յերկրի: 9 *Արձակեցեր զայրիս ունայնս. և զորբս չարչարեցեր: 10 *Ա՛յ արդ պատեցան զքև որոգայթք. և տագնապեաց զքեզ պատերազմ անհնարին: 11 *Լոյսն քո քեզ խաւար դիպեցաւ. և 'ի քուն ծածկեաց զքեզ ջուր: 12 *Միթէ որ 'ի բարձունս նայիցի՝ չտեսանիցէ՞. նա աւանիկ զզգածեալսն ամբարտաւանութեամբ խոնարհեցոյց: 13 *Ա՛յ ասացեր՝ թէ զի՞ ծանեաւ հզօրն. կամ թէ 'ի մէգի դատիցէ: 14 *Ամպ ծածկութիւն նորա. և ո՞չ երևեսցի. և ընդ ծիր երկնից շրջեսցի: 15 *Միթէ զշաւիղս յաւիտենականս պահեսցես. զորս կոխեցին արք արդարք: 16 *Որք յափշտակեցան տարաժամ. գետ բաղխեալ զհիմունս նց: 17 *Որք ասէին. զի՞ արասցէ մեզ Տր. կամ զի՞նչ ածցէ 'ի վերայ մեր Ամենակալն: 18 *Ա՛յ նա ելից զտունս նոցա բարութեամբ. բայց խորհուրդ ամպարշտաց հեռի է 'ի նմանէ: 19 *Տեսեալ արդարոց ծիծաղեցան. անարատին, և արհամարհեաց: 20 *Եթէ չէր ապականեալ հաստատութիւն նոցա. և զմնացորդս նոցա կերիցէ հուր: 21 *Բայց ա՛ղէ լեր խիստ. եթէ ժուժկալեսցես. և եթէ պտուղ քո եղիցի իրաւութիւն: 22 *Ընկա՛լ 'ի բերանոյ նորա դաւանութիւն. և ա՛ռ զբանս նր 'ի սիրտ քո: 23 *Ա՛յ եթէ դարձցիս՝ և խոնարհեցուսցես զանձն քո առաջի Տն. հեռի արարեր 'ի յարկէ քումմէ զանիրաւութիւն: 24 *Նստցիս յամրու-

Սաղմ. 106.42.

րութեն վիմի. և իբրև 'ի վէմ ձորոյն սոփերայ: * Եւ եղիցի ամենակալն օգնական քեզ 'ի թշնամեաց. և յստակ հատուսցէ քեզ իբրև զարծաթ զտեալ: 25
* Ապա համարձակեսցիս առաջի Տն. հայեցեալ յերկինս զուարթութբ: 26
* Յաղաչել քում առ նա լուիցէ քեզ. տացէ քեզ հատուցանել զաղօթս քո: 27
* Դարձուսցէ զքեզ յարկն արդարութեան. և 'ի ճանապարհս քո եղիցի լոյս: 28
* ‖ Զի խոնարհեցուցեր զանձն. և ասացեր` թէ ամբարտաւանեցայ. և զխոնարհս աչօք կեցուսցէ: 29
* Եւ փրկեսցէ զանարատն. և ապրեսցիս սրբութբ ձեռաց քոց: 30

‖ Առակ. 29. 23.

## Գլ. ԻԳ.

Արկնեալ անդրէն յոբայ` ասէ: 1

Նաև ես գիտեմ. զի 'ի ձեռանէ իմ մէ է յանդիմանութի իմ. և ձեռն նորա ծանրացաւ 'ի վերայ հեծութե իմոյ: 2
* Իսկ արդ` ո՞ ծանուսցէ` եթէ գտից զնա. և հասից նմա ի սպառ: 3
* Եւ ասացից առաջի նորա զիրաւունս. լցից զբերան իմ յանդիմանութբ: 4
* Ծանեայց զոլորանս` զոր ընդ իս խօսիցի. խելամուտ եղէց այնմ. զոր ինձն պատմիցէ: 5
* Եւ բազում զօրութբ եկեսցէ 'ի վերայ իմ. եթէ զպատուհաս իւր 'ի գործ ոչ արկանիցէ: 6
* Զի ճշմարտուի և յանդիմանութի 'ի նմանէ է. հանցէ ի սպառ զիրաւունս իմ: 7
* Եթէ յառաջագոյն երթայց` ոչ ևս իցեմ. և զվերջինսն զի՞ գիտիցեմ. 8
* Զձախ այնորիկ որ արարն զնա` ոչ կալայ. և եթէ արկցէ զաջ իւր զինև. սակայն և այնպէս ոչ տեսից: 9
* Զի ինքն գիտէ զճանապարհս իմ. և քննեաց զիս իբրև զոսկի: 10
* Ելից 'ի պատուիրանս նր. զճանապարհս նորա պահեցից. և ոչ ևս թիւր եցայց: 11
* Զպատուիրանօք նորա ոչ անցից` զի մի մեռանիցիմ. 'ի ծոց իմ թաքուցի զբանս նր: 12
* Ապա եթէ նա այնպէս դատեաց. ո՞ իցէ` որ ընդդէմ դառնայցէ նմա. զի զոր ինքն կամեցաւ. և արար: 13
* Վասն այնորիկ առ նա փութացայց. խրատեալ զնորին հոգացայց: 14
* 'Ի վերայ այսորիկ յերեսաց նր տագնապեցայց. և 'ի միտ առից. և զարհուրեցայց 'ի նմանէ: 15
* Զի Տր հիմանդացոյց զսիրտ իմ. և ամենակալն տագնապեաց զիս: 16
* Զի ոչ գիտէի. թէ գայցէ 'ի վերայ իմ խաւար. առաջի երեսաց իմոց ծածկեաց մէգ: 17

## Գլ. ԻԴ.

1 Ընդէ՞ր զՏր մոռացան ամբարշտաւածք:
2 * Եւ ամպարիշտք անցին զը սահման. զհօտ հանդերձ հովուօք յափշտակեցին:
3 * Զէշ որբոյն վարեցին. և զեզն այրւոյն գրաւեցին:
4 * Խոտորեցուցին զտկարս 'ի ճանապարհէ արդարութե. առ հասարակ ղօղեցուցին զհեզս երկրի:
5 * Դիպեցան իբրև զցիռս 'ի վայրի. վասն իմ ծախեցին զգործ իւրեանց` քաղցրացաւ նմ հաց ընդ լկտիս:
6 * Զանդ տհաս, որ ոչ իւրն էր` հնձեցին. տկարք զայգիս ամպարշտաց անհաց և անվարձ գործեցին:
7 * Զմերկս բազումս ննջեցուցին առանց հանդերձից. զզգեստս անձանց նոցա զերծին:
8 * 'Ի ցօղոյ լերանց թամկանան. քանզի ոչ գոյր նոցա յարկ. արկին զինքեանս ընդ վիմաւ:
9 * Յափշտակեցին զորբն 'ի ստենէն. և զակածն տառապեցուցին:
10 * Զմերկն ննջեցուցին տարապարտուց` հատին զհաց քաղցելոց:
11 * Յանձուկս դարանակալք եղեն 'ի տարապարտուց զճանապարհ արդարութե ոչ գիտացին:
12 * Որք 'ի քաղաքաց` և 'ի տանց իւրեանց զրկեցան. անձինք տղայոց մեծամեծս հեծեծեցին. և նա այնմ այցելութի ընդէ՞ր ոչ առնիցէ:
13 * Յերկրի էին նոքա` և ոչ ծանեան. զճանապարհս արդարութե ոչ գիտացին. և ընդ շաւիղս նր ոչ գնացին:
14 * Ծանուցեալ զգործս նց մատնեաց զնոսա 'ի խաւար. և զցայգ եղիցի իբրև զգող:
15 * Եւ աչք շնացելոցն պահեսցեն զխաւար. ասիցէ` եթէ ոչ զականեսցէ զիս ակն. և զքող էարկ զերեսօք իւրովք:
16 * Փորեաց ը մութ զատուն իւր. 'ի տուէ կնքեցին զանձինս. և ոչ ծանեան զլոյս:
17 * Եթէ միանգամայն առաւօտ նց 'ի ստուերս մահու է` եթէ 'ի միտ առնուցու զխռովութի ստուերաց մահու:
18 * Թեթևագոյն է 'ի վերայ ջուրց երեսաց. կործանեսցի մասն նոցա 'ի վերայ երկրի. երևեսցի տունկ նոցա 'ի վերայ ցամաք երկրի:
19 * Զի զանթառացիկ զորբոյն յափշտակեցին. ընդդէմ յափշտակեցան նմա մեղք. իբրև զմառախուղ ցօղոյ եղև անյայտ:
20 * Հատուսցի նմա. զորինչ արարն. խորտակեսցի ամ անիրաւ հանգոյն փայտի անբժշկականի:
21 * Զի ամլոյն բարի ոչ արար. և ամուրւոյն ոչ ողորմեցաւ:
22 * Սրտմտութբ կործանեաց զտկարս. թէպէտ և յարիցէ, մի հաւատասցէ կենաց իւրոց:
23 * ‖ Հիւանդացեալ` մի ակնկալցի ողջանալոյ. այլ անկցի ախտիւ. զի զբազումս չարչա-

‖ Յայտ. 2. 21.

րեաց

րեայ բարձրութիւն նորա ։ * Թարշա֊ 24
մեսցի իբրև զբանջար 'ի տօթի . կամ
իբրև զհասկ ինքնին անկեալ 'ի ցօղոյ ։
* Ապա եթէ իցէ ոք . որ ասիցէ զինէն 25
սուտ խօսիլ . դիցէ զբանս իմ յոչինչ ։

## Գլ. ԻԵ ։

Կրկնեալ անդրէն Բաղդատայ Սօքեցւոյ՝ ասէ ։ 1

Իսկ առաւել ինչ իցէ ահն առ 'ի նմա֊ 2
նէ որ առնէ զամ ինչ 'ի բարձունս ։
* Մի՞ ոք կարծեսցէ թէ դուցէ յապա֊ 3
զուամն հինից . յոյր վերայ ոչ եկեսցէ
դարանակալութիւն առ 'ի նմանէ ։
* Զիա՛րդ լինիցի արդար մարդ առա 4
ջի Տն . կամ ո՞ սրբեսցէ զանձն իւր 'ի
կանանցածնաց ։ * Զի եթէ լուսնի 5
հրամայեսցէ . և ոչ ծագէ . և աստեղք
ոչ են սուրբք առաջի նորա ։ * Թող 6
թէ մարդ երր . և որդի մարդոյ որդն ։

## Գլ. ԻԶ ։

Կրկնեալ անդրէն յոբայ՝ ասէ ։ 1

Յո՞ մօտիցիս . կամ ո՞ւմ օգնական լի֊ 2
նելոց իցես . ո՞չ ապաքէն այնմ, որոյ
բազում է զօրութիւն . և որոյ հզօր է բա
զուկ իւր ։ * Ընդ ո՞ւմ խորհրդակից լի֊ 3
նիցիս՝ ո՞չ ընդ այնմ, որոյ ամ իմաստու
թիւն է ։ * Զո՞յր զհետ երթիցես՝ եթէ 4
ոչ որոյ մեծ է զօրութիւն ։ ո՞ւմ պատմե֊
ցեր բանս . և ո՞յր շունչ ել 'ի քէն ։
* Միթէ սկայք ծնանիցին 'ի ներ֊ 5
քուստ ջրոյ . և 'ի դրացեաց նորա ։
* Մերկք են դժոխք առաջի նր՝ և չիք 6
զգեստ կորստեան ։ * Կախեաց զերկիր 7
'ի վր ոչնչի ։ * Ծրարէ զջուր յամպս 8
իւր . և ոչ պատառեցաւ մէգ 'ի ներքոյ
նր ։ * Որ ունի զերեսս աթոռոյ . թռու 9
ցանէ զնովաւ զմէգ իւր ։ * Հրաման 10
պատեաց զերեսօք ջրոյ . մինչ 'ի վախ֊
ճան լուսոյ ընդ խաւարի ։ * Սիւնք երկ 11
նից թռեան . և զարհուրեցան 'ի սաս֊
տէ նորա ։ * Զօրութբ հանդարտեցոյց 12
զծով . իմաստութբ նորա տարածեալ
է համատարածն ։ * Դղեք երկնից սար 13
սեցան 'ի նմանէ . հրամանաւ իւրով
սպան զվիշապն ապստամբ ։ * Ահա 14
այս է մասն ձայնապարհի նորա . և տա֊
կաւին զշիթս բանից նորա լուիցուք՝
( նովաւ ) զզօրութիւն որոտման նորա ,
ո՞ գիտէ՝ յորժամ առնիցէ ։

Ձգեաց զհիւսիս 'ի վր ոչ նչինէ , կախեաց զերկիր 'ի վր ոչնչի ։

## Գլ. ԻԷ ։

Դարձեալ յաւելեալ յոբայ առակի իւրում ասէ ։ 1

Կենդանի է Տէր . որ այսպէս դա֊ 2
տեաց զիս . և ամենակալն՝ որ դառ֊
նացոյց զանձն իմ ։ * Եթէ տակաւին 3
իցէ յիս շունչ իմ . և հոգի Ածեղէն
4 շուրջ զինև յռնգունս ։ * Ոչ խօսես
ցին շրթունք իմ զանօրէնութիւն . և ոչ
անձն իմ խորհեսցի զանիրաւութիւն ։
5 * Մի՛ լինիցի ինձ ասել զձեզ արդարս՝
մինչև մեռանիցիմ . զի ոչ փոխեցից զան
6 մեղութիւն իմ ։ * Արդարութեան անսա֊
ցեալ ո՛չ մեկնեցայց . զի ո՛չ գիտեմ
զանձին իմ գործեալ զանպատեհս ։
7 * Սակայն՝ թէ և էին թշնամիք իմ իբ֊
րև զկործանումն ամպարշտաց . և յա֊
րուցեալք 'ի վերայ իմ իբրև զկորուստ
8 անօրինաց ։ * Եւ զի՞նչ յոյս է ամպարշ
տի՝ զի յեցեալ կայցէ . վստահացեալ
9 'ի Տէր թերևս ապրիցի՞ ։ * Կամ թէ
խնդրուածոց նորա լուիցէ Տէր . եթէ
'ի հասանիլ 'ի վերայ նորա տագնապի ։
10 * Ոչ ունիցի համարձակութիւն առաջի
նորա . կամ 'ի կարդալ նորա առ նա ,
11 լուիցէ՞ նմա ։ * Այլ պատմեցից ձեզ՝
զինչ է 'ի ձեռին Տն . և որ իցէ ամենա
12 կալին , ոչ ստեցից ։ * Ահաւադիկ ա֊
մենեքին իսկ գիտէք . զի ունայն ունայ
13 նօք պատէք ։ * Այս մասն է մարդոյ
ամպարշտի 'ի Տէ . ստացուած հզօրաց
եկեսցէ 'ի վերայ նոցա յամենակալէն ։
14 * Զի եթէ բազումք ծնանիցին նմա
որդիք, 'ի սպանումն եղիցին . և եթէ յե֊
րիտասարդութիւն հասանիցեն , մուրա
15 ցիկք շրջեսցին ։ * Եւ որք զնովաւն
իցեն , մահուամբ վախճանեսցին . այ֊
16 րեաց նոցա մի ոք ողորմեսցի ։ * Եւ եթէ
ժողովեսցէ իբրև զհող զարծաթ . և
հանդոյն կաւոյ պատրաստեսցէ զոսկի
17 * Զայն ամենայն արդարք ստասցին .
և զինչս նորա ճշմարիտք կալցին ։
18 * Եւ եղև տուն նր իբրև ցեց՝ և իբրև
19 զսարդոստայն ։ * ‖ Մեծատունն ‖ Սաղմ 48.18.
ննջեաց , և ո՛չ յաւելցի յառնել . զաչս
20 իւր եբաց՝ և ոչ ևս իցէ ։ * Պատահես
ցին նմա իբրև զջուր ցաւք . գիշերի
21 ծածկեաց զնա մութն ։ * Առցէ զնա
22 խորշակ , և գնասցէ ։ * Եւ հոսեսցէ
23 զնա 'ի տեղւոջէ իւրմէ ։ * Եւ ընկես֊
ցէ զնա՝ մի խնայեսցէ . 'ի ձեռանէ նո
րա փախստիւ փախիցէ ։ ծափ զծափի
հարցէ 'ի վերայ նորա . և քարշեսցէ
զնա 'ի տեղւոջէ իւրմէ ։

## Գլ. ԻԸ ։

1 Զի է տեղի արծաթոյ՝ ուստի լինի .
և տեղի ոսկւոյ՝ ուստի կլկլի .
2 * Երկաթ 'ի հողոյ լինի . և պղինձ
3 հանդոյն քարի տաշի ։ * Կարգ եդ
խաւարի . և զամենայն վախճան ինքն
ճշմարտէ , զքար և զխաւար՝ և զստուերս
4 մահու ։ * Զխրամ հեղեղատի 'ի փոշ
ւոյ . և որք մոռանան զճանապարհս
ար֊

արդարութե՛, տկարացի՛ն 'ի մարդկանէ: *Երկիր' 'ի նմանէ ելցէ հաց. և 'ի 5
ներքոյ նորա իբրև զհուր շրջեցաւ:
*Տեղի շափիւղայի քարինք նորա. և 6
հող նորա ոսկի: *Շաւիղ է' զոր ոչ 7
ծանեաւ թռչուն. և ո՛չ դիտեաց զնա
ակն անգեղ: *Եւ ո՛չ կոխեցի՛ն զնա որ 8
դիք ամբարտաւանից. ո՛չ էանց 'ի նա
առիւծ: *Յապառաժն ձգեաց զձեռն 9
իւր. տապալեաց զլերինս 'ի հիմանէ:
*Զապառաժս գետոց պատառեաց. զամ 10
զպատուական ետես ակն իմ:
*Զխորս գետոց յայտնեաց. և եցոյց 11
զզօրութի՛ն իւր լոյս: *Իսկ իմաստու 12
թի՛ն ուստի՞ գտաւ' կամ զի՞նչ տեղի իցէ
հանճարոյ: *Ո՛չ գիտէ մարդ զճանա 13
պարհս նո՛ր. և ո՛չ գտաւ 'ի մէջ մարդկան:
*Անդունդք ասացին, թէ չէ՛ առ իս: 14
Եւ ծով ասաց, թէ չէ՛ ընդ իս: *Ո՛չ 15
տացի գրաւական ընդ նո՛ր. և ոչ կշռես
ցի արծաթ ընդ գնոց նորա: *Եւ ո՛չ 16
բարձցի ընդ ոսկւոյն սոփերայ. ը՛ եղն
գան պատուականի՛ և ը՛ շափիւղայի.
*Ո՛չ զուգեսցի ընդ նմա ոսկի և ապա 17
կի: և 'ի գի՛նս նորա անօթք ոսկեղէնք:
*Բարձրութի՛ւնք' խորութի՛ւնք ո՛չ 18
յիշեսցին. և ձգեաց զիմաստութի՛ւն
քան զներքնագոյնս: *Ո՛չ հաւասա 19
րեսցի նմա տպազիոնն եթէովպացւոց.
ընդ ոսկւոյ սոփերայ ո՛չ բարձցի:
*Իսկ իմաստութի՛ւն ուստի՞ գտաւ. 20
և զի՞նչ իցէ տեղի հանճարոյ:
*Մոլեալ է 'ի մարդկանէ. և 'ի թռչ 21
նոց երկնից ծածկեցաւ: *Կորուստ 22
և մահ ասացին. լուա՛ք զփառաւորու
թէ նորա: *Եւ Տր՛ դիւրաւ ընծայե 23
ցոյց զճանապարհ նորա: *Քանզի 24
ինքն գիտէ զտեղի նորա. և ինքն տե
սանէ զամենայն զառ 'ի ներքոյ երկնից.
քանզի գիտէ զամենայն: *Որ արար 25
յերկրի զկշիռ հողմոյ. և չափ ջրոց
զոր արար: *Ինքն ետես' և համարե 26
ցաւ. և զճանապարհ նո՛ր արձակմամբ
բարբառոյ: *Յայնժամ ետես զնա՝ 27
և պատմեաց զնմանէ, պատրաստեալ
քննեաց: *Եւ ասէ ցմարդ. ահա 28
Ածպաշտութի՛ւն է իմաստութի. և
մեկնիլ 'ի չարեաց է հանճար:

## ԳԼ: ԻԹ:

Դարձեալ յաւելեալ յոբայ յառակս իւր' ասէ: 1

Ո՞ տայր զիս ըստ ամսոց աւուրցն 2
առաջնոց՝ յորս Ած պահէր զիս:
*Յորժամ լուսաւորիւր ճրագ նորա 3
'ի վերայ գլխոյ իմոյ՝ յորժամ լուսով
նորա գնայի 'ի խաւարի: *Յորժամ 4
կայի զօրարձացեալ 'ի ճանապարհս.
յորժամ Տր՛ այցելութի՛ առնէր տան
5 իմում: *Յորժամ զգածեալն էի մե
ծութե՛. և շուրջ զինև ծառայք:
6 *Յորժամ թանային ճանապարհք
իմ կոգւով. և ուռոգանէին լերինք իմ
7 կաթամբք: *Յորժամ ելանէի ընդ
առաւօտս 'ի քաղաքն. և արկանիւր 'ի
8 հրապարակս աթոռ իմ: *Տեսանէին
զիս երիտասարդք՝ և թաքչէին. ծերք
9 յոտն կային: *Ծերք դադարէին 'ի
խօսելոյ. և դնէին զմատունս 'ի վերայ
10 բերանոց իւրեանց: *Այք լսէին զի
նէն. երանէին ինձ՝ և լեզուք նոցա 'ի
11 քիմս իւրե՛ կցեցան: *Զի ունկն որ
լսէր՝ երանի տայր ինձ. և ակն, որ տեսա
12 նէր՝ խոտորէր յինէն: *Զի փրկեցի
զաղքատն 'ի ձեռանէ հզօրի. և որբոյ
որոյ ոչ էր օգնական՝ օգնեցի:
13 *Օրհնութի կորուսելոյն 'ի վերայ իմ
եկեսցէ. և բերան այրւոյն զիս օրհ
14 նեաց: *Զարդարութի զգեցեալ էի.
և արկեալ զիրաւունս հանգոյն կրկնո
15 ցի: *Աչք էի կուրաց՝ և ոտք կաղաց:
16 *Հայր էի ես տկարաց. դատաստան՝
17 զոր ոչ գիտէի, քննէի: *Խորտակէի
զկզակսն անիրաւաց. և 'ի միջոյ ժա
նեաց նոցա կորզէի զյափշտակութի:
18 *Ասէի՝ թերևս հասակ իմ ծերասցի.
և իբրև ծառ արմաւոյ բազում ժա
19 մանակս կեցից: *Արմատ ընդարձա
կեալ 'ի վերայ ջրոյ. և ցօղ հանգիցէ
20 'ի վերայ հնձոց իմոց: *Կարծիքն իմ
ընդունայն են ինձ. և աղեղն իմ 'ի
21 ձեռին նորա գնայ: *Յինէն լուեալ
անսային՝ և կարկէին 'ի խորհրդեան
22 իմում: *Ի բանս իմ ոչ յաւելուին.
խնդալից լինէին՝ յորժամ խօսէի ը՛
23 նոսա: *Իբրև զերկիր ծարաւի՝ որ
սպասիցէ անձրևի՝ և նք՛ իմոց խօսից:
24 *Եթէ ծիծաղէի ը՛ նս՛, ո՛չ հաւատայ
ին. և լոյս երեսաց իմոց ո՛չ նուազիւր:
25 *Ընտրէի զճանապարհս նոցա. և նստ
էի իշխան. և բնակէի իբրև զթա
գաւոր 'ի մէջ զօրականաց. զորօրինակ
զրդանօք մխիթարէի:

## ԳԼ: Լ:

1 Արդ ծիծաղեն զինև յետինք. արդ
խրատեն զիս 'ի մասին. զորոց պա
խարակէի զհարս նոցա. զորս ո՛չ համա
րէի լինել հաւասար խաշանց արօտա
2 կանաց իմոց: *Եւ զօրութի ձեռաց
նոցա ընդէ՞ր էր ինձ. 'ի վերայ նոցա կո
3 րեաւ վախճան: *Ի կարօտութի և
'ի սով անծնունդ. որք փախչէին եր
էկ յանջրդոյ յանձկութէ և 'ի թշուա
4 ռութէ: *Որք պատէին խաբշափուն
բանջարով. որոց բանջար իւր էր կե
րա

բակուր. անարգք՝ և արհամարհեալք կարօտեալք ամենայն բարութե։ 5 *Որք և զարմատս փայտից ծամէին 'ի սաստիկ սովու. յարեան 'ի վերայ իմ 6 գողք։ *Որոց տունք իւրեանց էին ծակ վիմաց. 'ի մէջ արձագանգաց գո 7 չեսցեն։ *Որք ընդ խռուոլք վայրե– 8 նեօք բնակեալ էին։ *Որդիք անզգա– մաց՝ և անարգաց. և շիջելափառք յեր 9 կրէ։ *Արդ՝ քնար եմ ես նց. և զիս 10 ունին 'ի բամբասանս։ *Գարշեցան յինէն մեկնեալք 'ի հեռաստան. և յերեսաց իմոց թուք ոչ խնայէին։

11 *Զի բացեալ զկապարճս իւր խոցո տեաց զիս. և սանձս երեսաց իմոց ա– 12 ռաքեաց։ *Յարեան 'ի վերայ աջոյ շա ռաւիղի. զոտս իւր ձգեաց՝ և ճանա– պարհ արար 'ի վն իմ։ 13 *Ընդ շաւիղս կորստեան նոցա. շփեցան շաւիղք իմ. մերկացոյց զպատմուճան իմ. նետիւք 14 իւրովք խոցոտեաց զիս։ *Մաշուցեալ յիս որպէս և կամի. ցաւօք վարակեալ 15 եմ։ *Դարձեալ են յիս ցաւք. գնաց յինէն յոյս իբրև զհողմ, իբրև զմէգ 16 փրկութի իմ։ *Եւ արդ զինև զեղծցի անձն իմ. ունին զիս աւուրք ցաւոց։

17 *Գիշերի ոսկերք իմ խարշեցան. և 18 ջիլք իմ լուծեալք են։ *Բազում զօ րութբ ձեռն էարկ զպատմուճանաւ իմով. և իբրև զժապաւէն պատմու– 19 ճանի իմոյ շուրջ կալաւ զիս։ *Հա– մարի զիս հանգոյն կաւոյ. 'ի հող և 20 'ի մոխիր է բաժին իմ։ *Աղաղակեցի առ քեզ՝ և ոչ լսիցես ինձ. կացի՝ և ոչ 21 հայեցար յիս։ *Պատահեցար ինձ ան ողորմ, հզօր ձեռամբ հարեր զիս։

22 *Կարգեցեր զիս 'ի ցաւս. և ընկեցեր 23 զիս 'ի փրկութէ։ *Գիտեմ՝ զի մահ սատակեսցէ զիս. զի բնակութի ամ 24 մահկանացուի երկիր է։ *Արդ թէ կարէի զանձն իմ վարժել. կամ աղա չել զայլ. և առնէր ինձ զայն։ 25 *Եւ ես 'ի վերայ ամենայն տկարի լայի. և հեծեծէի, յորժամ տեսանէի զայր 'ի 26 վիշտս։ *Եւ ունէի 'ի բարութի. և ահաւասիկ պատահեցան ինձ առաւել 27 աւուրք չարեաց։ *Որովայն իմ մռաւ. և ոչ դադարեսցէ. ժամանեցին ինձ 28 աւուրք աղքատութե։ *Հեծեալ շր– ջեցայց առանց բերանակապի. կացի 'ի մէջ եկեղեցւոյ աղաղակ բարձեալ։ 29 *Եղբայր եղէ համբարուաց. և ըն– 30 կեր ջայլեմանց։ *Մորթ իմ սևացաւ սաստկագոյն. և ոսկերք իմ 'ի տօթոյ։ 31 *Դարձաւ 'ի սուգ քնար իմ. սիրտ իմ, և երգ իմ 'ի լալումն։

## ԳԼ: ԼԱ.

1 Ուխտ եդի ընդ աչս իմ. և ոչ հայե 2 ցայց 'ի կոյս։ *Եւ զի՞ բաժանեաց Ած 'ի վերուստ. և ժառանգութիւն 3 բաւականին 'ի բարձանց։ *Ոչ ապա– քէն կորուստ անիրաւին՝ և օտարացու թի այնոցիկ՝ որք գործեն զանօրէնու 4 թի։ *Ոչ ապաքէն ինքն տեսցէ զճա նապարհս իմ. և զամենայն գնացս իմ 5 թուեսցին։ *Եթէ գնացեալ իցեմ ընդ այպանողս. եթէ վաղվաղեաց 6 ոտն իմ 'ի նենգութի։ *Զի կշռեալ եմ 'ի կշիռս արդարութե. և գիտէ Տր 7 զանմեղութի իմ։ *Եթէ թիւրե– ցաւ ոտն իմ 'ի ճանապարհէ. եթէ չո գաւ սիրտ իմ զկնի ական իմոց. եթէ 8 հպեցայ ձեռօք 'ի կաշառս։ *Ապա ես սերմանեցից՝ և այլք կերիցեն. և 9 անարմատ եղէց յերկրի։ *Եթէ գնաց սիրտ իմ զհետ կնոջ առն այլոյ. ե– թէ դարանակալ եղէ առ դրունս 10 տան նորա։ *Ապա լիցի հաճոյ և իմ կնոջ այլում. և մանկունք իմ տառա 11 պեսցին։ *Զի սրտմտութի անժոյժ 12 բարկութե է՝ պղծել զկին առն։ *Հուր վառեալ յամենայն անդամս նորա. զի յոր կոյս հասցէ, յարմատոց խլեսցէ։

13 *Եթէ խոտեցի երբէք զիրաւունս ծառայի՝ կամ զաղախնոյ մատուցելոց 14 առ իս յատեան։ *Եւ զի՞նչ գործեցից. եթէ հարց ու փորձ արասցէ ինձ Տր. և եթէ այցելութի. և եթէ զինչ պա 15 տասխանի արարից։ *Ոչ ապաքէն որպ ես եղէ յարգանդի՝ և նոքա եղեն. 'ի 16 նմին որովայնի եղեաք։ *Իսկ տկարք որոց պէտք ինչ էին. ոչ արդեօք երբէք վճարեցի. զակն այրւոյ ոչ կողկողեցու 17 ցի։ *Եթէ կերի արդեօք զպատառն իմ միայն՝ և որբոյն ոչ կարկառի։ 18 *Զի 'ի մանկութէ իմմէ սնուցի իբրև զհայր. և յարգանդէ մօր իմոյ առաջ 19 նորդեցի։ *Եթէ արարի անտես ըզ մերկն կորուսեալ՝ և ոչ զգեցուցի։ 20 *Եթէ ո՞չ օրհնեցին զիս տկարք. և 'ի կորոց խաշանց իմոց ջեռան թիկունք 21 նց։ *Եթէ վերացուցի ձեռն 'ի վն որբոյն՝ յուսացեալ թէ բազում է իմ 22 օգնականութի։ *Ապա թափեսցի յան րակէ ուս իմ. և բազուկ իմ յարմկա 23 նէ իմմէ խորտակեսցի։ *Զի ահ Տն կալաւ զիս. և առաջի նր ոչ հանդար 24 տեցից։ *Եթէ կարգեցի զոսկի 'ի հող իմ. եթէ յականս պատուականս յու 25 սացայ։ *Եթէ ուրախ եղէ 'ի բա– զում մեծութի եկելոյ ինձ. եթէ 'ի վն 26 անթուոց եդի զձեռն իմ։ *Կամ թէ ոչ տեսանիցեմ զարեգակն լուսաւո–

րից նուաղեալ. և զլուսին մաշեալ։
* Եւ ո՛չ ՚ի նոցանէ։ և եթէ խաբեցաւ 27
գաղտ սիրտ իմ. եթէ ձեռն եդեալ
՚ի վ՟ր բերանոյ իմոյ համբուրեցի։
* Ապա այն ՚ի մեծ անօրէնութիւն համա 28
րեսցի ինձ. զի ստեցի առաջի Տ՟ն բարձ
րելոյ։ * Եթէ ոտնհար եղէ ՚ի վ՟ր կոր 29
ծանման թշնամւոյ իմոյ. և ասացի ՚ի սրտի
իմում թէ՝ վա՛շ։ * Ապա լուիցէ ունկն 30
իմ զանէծս իմ. զզուեցայց ապա և ես
՚ի ժողովրդենէ իմմէ գարշելեալ։
Գեբ. ո՛չ աստղին * Եթէ ասացին բազում անգամ ա 31
ղախնայք իմ. ո՛ տայր մեզ յագել ՚ի մար
մնոյ նո՟ր. զի յոյժ քաղցր էի նոցա։
* Արտաքոյ ո՛չ ագանիւր օտար. զի 32
դուռն իմ բաց էր ամենայն եկելոյ։
* Եթէ թաքուցի զմեղս իմ ակամայ մե 33
ղուցեալ։ * Զի ո՛չ ամաչէի ՚ի բազմա 34
կոյտ ամբոխէ առ ՚ի չպատմել առաջի
նո՟ր։ եթէ արձակեցի երբէք զտկարն ու
նայն գոգով ելանել ՚ի դրաց իմոց։
* Ո՛ տայր ինձ լսել. եթէ ձեռին Տ՟ն 35
չէր զարհուրեցուցեալ։ կամ թէ մուր
հակ՝ զոր ունէի զումեքէ։ * Իբրև 36
զպսակ ՚ի վ՟ր ուսոց եդեալ ընթեռնուի։
* Եւ ո՛չ պատառէի՝ և անդրէն դար 37
ձուցանէի. ոչինչ առեալ ՚ի պարտա
կանէն. * Եթէ հեծեաց երբէք եր 38
կիր մ՟ն իմ։ և եթէ ակօսք նո՟ր լացին առ
հասարակ։ * Եւ եթէ զզօրութիւն 39
նորա կերի միայն առանց գնոյ. եթէ
զանձն Տ՟ն երկրին զայրացուցեալ տրտ
մեցուցի։ * Ապա փոխանակ ցորենոյ 40
բուսցի եղինձ. և փոխանակ գարւոյ
մորենի։

## ԳԼ. ԼԲ.

Եւ դադարեցաւ յոբ ՚ի խօսից։ լուեցին և երե 1
քեան բարեկամքն նո՟ր այնուհետև ՚ի խօսելոյ ընդ
դէմ յոբայ, զանզի էր յոբ արդար առաջի նո՟ր։

Եւ բարկացաւ եղիուս բարաքիելի 2
բուզացի՝ յազգականութենէ արա
մայ՝ աշխարհէն ոստացւոյ։ բարկա
ցաւ յոյժ յոբայ. զի երևեցոյց զանձն
արդար առաջի Տ՟ն։ * Եւ ՚ի վ՟ր երե 3
ցունց բարեկամացն բարկացաւ յոյժ.
զի ո՛չ կարացին տալ պատասխանի ընդ
դէմ յոբայ։ և եդեալ զնա լինել ամ
պարիշտ։ * Եւ եղիուս համբերեաց 4
՚ի տալոյ պատասխանի յոբայ. զի ծե
րագոյն քան զնա էին աւուրբք։
* Եւ ետես եղիուս. եթէ ո՛չ գոյ պա 5
տասխանի երեցունց արանցն. և սրտմը
տեցաւ բարկութիւն նո՟ր։ * Արգնեալ անդ 6
րէն եղիուսայ բարաքիելի բուզացւոյ՝ ասէ։
* Մանուկ եմ ժամանակաւ. և դուք
էք ծերագոյնք։ վասն որոյ լուռ եղէ՝
երկ

երկուցեալ պատմել զանձին իմոյ զի
7 մաստութիւն։ * Ասացի՝ թէ բազում
ժամանակեայք են, որք խօսիցին. և
բազում ամօք գիտիցեն զիմաստու
8 թիւն։ * Եւ ո՛չ այնպէս. այլ ոգի է մարդ
կան. և շունչ ամենակալին է՝ որ ուսու
9 ցանէ։ * Ո՛չ բազմաժամանակեայք
են իմաստունք. և ո՛չ ծերք գիտեն
10 զիրաւունս։ * Վ՟ա որոյ ասացի՝ լուա
րուք ինձ. և պատմեցից ձեզ՝ զոր գի
11 տեմ։ * Ունկնդիր լերուք բանից իմոց.
ասացից ձեզ լուիլուն. մինչև քննիցէք
12 զբանս։ * Եւ ձեզ չափ իմանայցեմ. և
ահա ո՛չ էր. որ յանդիմանէր զյոբ. և
տայր պատասխանի բանից նո՟ր ՚ի ձէնջ։
13 * Զի մի՛ ասիցէք. գտաք զիմաստու
14 թիւն ՚ի Տ՟է յաւելեալք։ * Եւ առն
միում համարձակիցիք խօսիլ բանս
15 այսպիսիս։ * Զարհուրեցան՝ և ո՛չ ևս
ետուն պատասխանի. հնացուցին յինք
16 եանց զբանս։ * Համդարտեցան՝ և ո՛չ
խօսեցան. զի կացին՝ և ո՛չ ետուն պա
17 տասխանի։ * Արգնեալ անդրէն եղիուսայ
18 ասէ։ դարձեալ խօսեցայց։ * Զի լի եմ
բանիւք. քանզի սատակէ զիս ոգի
19 որովայնի։ * Եւ որովայն իմ իբրև
զտիկ քաղցուի կապեալ եռայ։ կամ
իբրև զփուքս դարբնաց ուռուցեալ։
20 * Խօսեցայց, զի հանգեայց։ բացեալ
21 զշրթունս իմ։ * Եւ ՚ի մարդոյ ո՛չ
ամաչեցից. և ՚ի մարդկանէ ո՛չ պատ
22 կառեցից։ * Քանզի ո՛չ գիտեմ ա
չառել երեսաց. ապա թէ ո՛չ, և զիս
ցեց կերիցէ։

## ԳԼ. ԼԳ.

1 Բայց արդ՝ դու յոբ՝ լո՛ւր զբանս
իմ. և ունկնդիր լեր խօսից իմոց։
2 * Ահաւասիկ բացի զբերան իմ. և խօ
3 սեցաւ լեզու իմ։ * Սուրբ է սիրտ իմ
բանիւք. իմաստութիւն շրթանց իմոց
4 յստակս իմասցի։ * Հոգի Ա՟ծ եղէն՝
որ արար զիս. և շունչ ամենակալին է՝
5 որ ուսուցանէ զիս։ * Եթէ կարող ես՝
տո՛ւր ինձ առ այս պատասխանի. ապա
6 թէ ոչ, համբերեա՛ լեր։ * Կա՛ց ըստ իմ՝
և ես ըստ քեզ. ՚ի կաւոյ կազմեալ ես
և դու իբրև զիս. անդստին կազմեալք
7 եմք։ * Արդ՝ մի՛ ահ իմ զարհուրեցու
ցէ զքեզ. և մի՛ ձեռն իմ ծանրասցի ՚ի
8 վ՟ր քո։ * Սակայն խօսեցար յականջս
իմ. և զբարբառ բանից քոց լուայ։
9 * Զի ասացեր, թէ սո՟ւրբ եմ, և ո՛չ մե
ղայ. անարատ եմ, զի ո՛չ անօրինեցայ.
10 * Մեղադրութիւն եգիտ զինէն. համա
րեցաւ զիս իբրև զհակառակորդ։
11 * Եդ ՚ի կոճեղ զոտն իմ. պահեաց զա՟մ
12 ճանապարհս իմ։ * Զիարդ ասես՝,


եթէ

եթէ արդար եմ, և ոչ լուեաւ ինձ. զի յաւիտենական է՝ որ ՚ի վե՟ր մարդկան է։ 13 * Եւ՞ ասես, եթէ ընդէ՞ր դատաստանի 14 * ՚Ի միում իմում ոչ լուեաւ ա՟մ բանի։ * ՚Ի միում նուագի խօսեսցի Տէր. և յերկրորդումն 15 գուշա երազով։ * Կամ զբաղմամբ գիշերականաւ. յորժամ անկանիցին աշխարհք 16 ՚ի վե՟ր մարդկան՝ հանգչիցին ՚ի մահիճս իւրեանց։ * Յայնժամ յայտնի առնէ միտս մարդկան. այնպիսի տեսլեամբք ահի զարհուրեցուցանէ զնոսա։ 17 * Դարձուցանել զմարդ յանիրաւութենէ. և զմարմին նո՟ր փրկեաց ՚ի կործանմանէ։ 18 * Խնայեաց զանձն նորա ՚ի մահուանէ. չանկանել նմա ՚ի պատերազմի։ 19 * Դարձեալ կշտամբեաց զնա հիւանդութեամբ անկողնի. և զբազմակոյտ ոսկերաց նո՟ր ընդարմացոյց։ 20 * Եւ մենայն ուտելի կերակրոյ ոչ կարասցէ ախն ուտել. և անձն նո՟ր ցանկասցի կերակրոյ։ 21 * Մինչև նեխեսցին մարմինք նորա. և 22 ցուցցէ զոսկերս նո՟ր ունայն։ * Մերձեցաւ ՚ի մահ անձն նո՟ր. և կեանք նո՟ր ՚ի դժոխս։ 23 * Եթէ իցեն հազար հրեշտակք մահաբերք. մի ՚ի նոցանէ զնա մի խոցեսցէ։ 24 * Եթէ իմասցի սրտիւ իւրով դառնալ առ Տր՟. պատմեսցէ մարդոյ զմեղս իւր. և ցուցցէ զանմտութիւն իւր. պաշտպանեսցէ առ ՚ի չանկանելոյ նմա ՚ի մահ։ 25 * Նորոգեսցէ զմարմին նորա իբրև զծեփ որմոյ. և ոսկերք նո՟ր լցցին ուղղով. փափկացուսցէ զմարմին նորա իբրև զտղայոյ. հաստատեսցէ զնա երի տասարդացեալ ՚ի մէջ մարդկան։ 26 * Յաղաչել իւրում առ Տր՟ ընդունելի եղիցի նմա. մտցէ լուրջ երեսօք դաւանութեամբ. հատուսցէ մարդկան զարդարութիւն։ 27 * Ապա մեղադիր լիցի մարդ ինքն յինքն ասիցէ. թէ զորպիսիս վձարէի. և ոչ արժանի՝ ըստ որոց մեղայն՝ 28 պատժեաց զիս։ * Փրկեա՛ց զանձն իմ. զի մի՛ մտցէ յապականութիւն. և կեանք իմ տեսցեն զլոյս։ 29 * Ահա զայս ա՟մ գործէ հզօրն. երիս ճանապարհս ընդ 30 առն։ * Եւ փրկեաց զանձն իմ ՚ի մահուանէ. զի կեանք իմ ՚ի լոյս օրհնեսցեն զնա։ 31 * Ունկն դիր յոբ՝ և լո՛ւր 32 ինձ. կարկեա՛ց և ես խօսեցայց։ * Եթէ գուցէ բան՝ տո՛ւր ինձ պատասխանի. քանզի կամիմ թէ արդարասցիս։ 33 * Ապա թէ ո՛չ՝ լո՛ւր ինձ դու. կարկեաց՝ և ուսուցից քեզ զիմաստութիւն։

## ԳԼ. ԼԴ.

Արհնեալ անդրէն եղիուայ՝ ասէ։ 1

Լուարո՛ւք ինձ իմաստունք. ունկն 2 դի՛ր լերուք հանճարեղք։

3 * Զի ունկն զբանս քննէ. և կոկորդ 4 զկերակուրս ճաշակէ։ * Ընտրեսցո՛ւք մեզ դատաստան. գիտասցուք ՚ի միջի 5 մերում, թէ բարի է։ * Զի ասաց յոբ՝ թէ արդար եմ ես. և Տր՟ ընկեց զիրաւ 6 ունս իմ։ * Եւ՞ ստեաց դատաստանի իմում. բռնութիւն է նետս իմ առանց 7 անիրաւութեան։ * Ո՞վ իցէ իբրև զյոբ. որ ըմպէ զարհամարհանս իբրև զջուր։ 8 * Ոչ մեղուցեալ՝ և ոչ ամպարշտեալ. կամ հաղորդեալ ճանապարհի՝ որոց գործեն զանօրէնութիւն, գնալ ընդ 9 ամպարշտս։ * Մի՛ ասիցես չիք այցելութիւն նմա ՚ի Տէ։ 10 * Վ՟ն որոյ՝ հանճարեղք սրտիւք լուարո՛ւք ինձ. մի՛ լիցի ինձ ամպարշտիլ առաջի Տն՟. և առաջի ամենակալին աղմկել զիրաւունս։ 11 * Այլ հատուսցէ մարդոյ ըստ իւրաքանչիւր գործոց նո՟ր. և ՚ի ճանապարհի առն գտցէ զնա։ 12 * Համարիցիս զՏէ անկարգս ինչ առնել. կամ թէ ամենակալն պղտորիցէ զիրաւունս։ 13 * Որ արար զերկիր. ո՞վ է՝ որ արար զառ ՚ի ներքոյ երկնից. և զա՟մ որ ՚ի միջոցի։ 14 * Եթէ կամիցի պնդել՝ և զշունչ առ 15 ինքեան արգելուլ. * Վախճանեսցի ա՟մ մարմին առհասարակ. և ա՟մ մարդ ՚ի հող դարձցի, ուստի և ստեղծաւ։ 16 * Ապա թէ ոչ խրատիցիս՝ լո՛ւր զայս. ո՛ւնկն դիր բարբառոյ բանից։ 17 * Եթէ դու ո՛չ համարիցիս զայն, որ ատեայ զանիրաւութիւն. և կորուսանէ զչարս. արդարք յաւիտեան կան. 18 ամպարիշտ է. * Որ ասէ ցթագաւոր թէ անօրէն ես՝ ամպարշտագոյն քան 19 զիշխանս։ * Որ ոչ պատկառեցաւ ՚ի պատուական երեսաց. և ո՛չ գիտաց պատիւ դնել արանց՝ և մեծարել զե20 րեսս նո՟ր։ * Ընդունայն լիցի նո՟ր աղաղակելն՝ և աղաչել զայր. զի վարեցան անօրէնութեամբ ՚ի խոտորեցուցանել զի21 րաւունս։ * Զի ինքն է տեսող գործոց մարդկան. և ծածկեաց ինչ ո՛չ ՚ի նմանէ՝ 22 զոր գործեցին։ * Եւ՞ չիք տեղի թաքչելոյ այնոցիկ՝ ոյք գործեն զանօրէնու23 թիւն։ * Զի ոչև ս դիցէ ՚ի վերայ առն. քանզի Տր՟ զամենեսեան տեսանէ։ 24 * Որ հասանի անքննականաց. փառաւորաց՝ և հրաշակերտաց՝ որոց ո՛չ 25 գոյ թիւ։ * Որ ճանաչէ զգործս նո՟ր և դարձուցանէ ՚ի գիշեր. և խոնարհես26 ցին։ * Շիջոյց զամպարիշտս. մատնեցոյցք եղեն առաջի թշնամեաց իւրեանց։ 27 * Զի խոտորեցան յօրինաց Այ՟. և զի 28 իրաւունս նո՟ր ոչ ծանեան։ * Ածել զնոտրաւ զաղաղակ տնանկի. և զբողոք աղքատաց լուիցէ։ 29 * Եւ՞ ինքն տացէ լռութիւն. և ո՞ պատժեսցէ զնա. և ծածկիցէ զե-

զերեսս՝ և ո՛ տեսանիցէ զնա. և ազգայ մարդկան միանգամայն. *30 Թագաւո_ րեցուցանէ զայր կեղծաւոր՝ վա խռովու թեան ժողովրդեան. *31 Զի որ ասէ ընդդէմ հզօրին՝ թէ առի՛ և գրաւեցի առանց քո. *32 Առանց տեսեր՝ ցոյց ինձ. և եթէ անիրաւութիւն արարի. այլ ոչ յաւելից. *33 Մի թէ 'ի քէն ոք պահանջիցէ զայն, զի՛ մերժեսդ. դու ընտրես ցեր՝ և ոչ ես. և թէ գիտիցես ինչ՝ խօսեաց. *34 Վ ա՛ որոյ հանճարեղք սրտիւք խօսեսցին զայս. և այր իմաստուն լուաւ զայս. *35 Բայց յոբ ոչ իմաստու_ թեա՛ խօսեցաւ. և բանք նո՛ ոչ են հան ճարով. *36 Բայց սակայն ուսի՛ր յոբ. և մի՛ տացես պատասխանի իբրև զան_ զգամս. *37 Զի մի՛ յաւելուցումք 'ի մեղս ձերոց. անօրէնութի՛ համարեալ լինիցի 'ի ձէնդ 'ի բազում բանս խօսե_ լոյ առաջի Տ՛ն.

## ԳԼ: ԼԵ.

Արհնեալ անդրէն եղիուսայ՝ ասէ. 1

Զ՛ինչ իրաւունս համարեցեր զայդ. 2 զո՛վ ես դու. զի ասես՝ թէ ար_ դար եմ առաջի Տ՛ն. *3 Այ՛ կամ ասի_ ցես, թէ մեղայ, զի՛նչ արարից. *4 Ես տաց քեզ պատասխանի. և երեցունց բարեկամացդ քոց. *5 Հայեա՛ց յերկինս՝ և տե՛ս 'նշմարեա՛ զամպս՝ որչափ բարձր են 'ի քէն. *6 Այթէ մեղար, զի՛նչ գոր_ ծեսցես. և եթէ բազում անօրինե_ ցար, զի՛նչ կարող ես առնել.

*7 Արդ եթէ արդար իցես՝ զի՛նչ տա ցես նմա. կամ զի՛նչ առցէ 'ի ձեռաց քոց. *8 Ընդ նմանւոյ քեզ ամպարշտու թի՛ն քո. և որդւոյ մարդոյ արդարու թի՛ն քո. *9 'Ի բազմութէ զրպարտեալք աղաղակեսցեն 'ի բազկէ բազմաց. *10 Եւ՛ ոչ ասաց՝ թէ ուր է Տ՛ր ն՛ր. որ ա_ րար զիս. որ պահէ զպահս գիշերա_ կանս. *11 Որ մեկնէ զիս 'ի չորքոտանեաց երկրի՝ և 'ի թռչնոց երկնից. *12 Անդ աղաղակեսցեն՝ և մի՛ լուիցէ. և 'ի հպար տութէ չարեաց. *13 Զի զանկարգու թիս տեսանել Տ՛էր ո՛չ կամի. զի ինքն ամենակալն տեսանող է այնոցիկ՝ որք կատարեն զանօրէնութի՛ և փրկեսցէ զիս. *14 Դատեա՛ առաջի նորա. եթէ կարասցես գովել զնա ո՛րպ էն. *15 Այ՛ արդ՝ քանզի չէ՛ որ կրեաց զբարկութի՛ նորա. և ո՛չ՝ որ գիտաց զյանցանս իւր յոյժ. *16 Ապաւրեմ՛ն յոբ զո՛ւր բանայ զբերան իւր. և ծանրացուցանէ անգի տութեա՛ զբանս.

## ԳԼ: ԼԶ.

1 Արհնեալ անդրէն եղիուսայ՝ ասէ.

2 Մնա՛ ինձ տակաւին սակաւիկ մի՛ զի ուսուցից քեզ. զի տակաւին 3 գո՛ն յիս բանք. *Առեալ 'ի հեռաստա նէ զհանճար իմ. արդեամբք զիրաւ_ 4 ունս իմ խօսեցայց. *Ճշմարտութե՛ և ոչ անիրաւ բանս տարապարտուց 5 իմացեալ. *Գիտեա՛ զի Տ՛ր ոչ մերժէ 6 զանմեղն. հզօր է զօրութե՛. *Զսիրտ ամպարշտի ոչ կենդանացուսցէ. և ի_ 7 րաւունս տացէ աղքատի. *Մ՛է արկցէ ոչ 'ի բաց զաչս իւր յարդարոյ. և ը՛ թագաւորս բարձցէ է յաթոռ. և նստուսցէ զնո՛ իսպառ՝ զաչս 8 և բարձրասցի. *Ա՛յ կապեալք ձեռնա կապօք՝ վարեսցին տուամբք տնան_ 9 կութե՛. *Ա՛յ պատմեսցէ նո՛ զգործս նո՛. և զյանցանս նո՛՝ թէ զօրասցին. 10 *Այլ արդարոյն լուիցէ. և ասաց՝ զի 11 դարձցին յանիրաւութէ. *Այթէ լուի ցեն՝ և ծառայեսցեն, կատարեսցեն զաւուրս իւրեանց 'ի բարութիւնս. և զամս իւրեանց 'ի վայելչութիւնս. 12 *Բայց զամպարիշտս ոչ կեցուսցէ. զի ոչ կամեցան նոքա ճանաչել զՏ՛ր. և զի խրատեալք և անհնազանդք էին. 13 *Այ՛ կեղծաւորք սրտիւք դրդուես_ ցեն զսրտմտութի. ո՛չ գաժեսցեն՝ զի 14 կապեաց զնո՛. *Մեռցի յերիտասար դութե՛ անձն նո՛. և կեանք նո՛ խոցո 15 տեալք 'ի հրեշտակաց. *Փոխանակ զի նեղեցին զտկարն և զանզօրն. և 16 իրաւունս հեզոց հանցէ. *Այ՛ վերծոյց զքեզ 'ի բերանոյ թշնամեաց. և ան_ դունդք որոյ տարածումն 'ի ներքոյ իւր. և էջ սեղան քո լի պարարտութբք. 17 *Մի պակասեսցին իրաւունք արդա րոյ. սրտմտութի 'ի վ՛ր ամպարշտաց 18 հասցի. *Վ ա՛ ամպարշտութե կաշա_ ռաց՝ զոր ընդունէին անիրաւութբ. 19 *Մի՛ թիւրեսցեն զքեզ միտք կամա կարութե խնդրուածոց՝ յորժամ 'ի վիշտս իցեն տկարք. և զա՛մ զօրաւորս 20 զօրութբ. *Մի՛ ձգեսցես գիշերի ելանել ժողովրդոց փոխանակ նոցա. 21 *Այլ զգո՛յշ լեր՝ գուցէ գործիցես զանպատեհս. քանզի զնա փրկեցեր 22 յաղքատութէ. *Ահա հզօրն զօրա_ ցուսցէ զօրութբ իւրով. քանզի՝ ո՛վ է 23 իբրև զնա զօրաւոր. *Կամ ո՛վ է՝ որ քննէ զգործս նո՛. կամ ո՛վ է՝ որ ասի_ ցէ, անիրաւս գործեաց՝ զորս գոր_ 24 ծեաց. *Յիշեա՛ զի մեծամեծք են գործք նո՛. զոր սկսան այրք արդարք. 25 *Ամենայն մարդ եսես ինքեամբ. որչափ խո 26 ցոտեալք են մարդիկք. *Ահա հզօրն

սաստիկ է՝ և ոչ իմասցուք՝ թիւ ամաց
նր̃ անսպառ: *Թուեալ են նմա շիթք 27
անձրևի. և զեղցին անձրևաւ յամպս:
*Բղխեսցին հնացեալք. հովանացոյց 28
զամպս ՚ի վր̃ անբաւ մարդկան: ( մի՛
գացին ՚ի վր̃ բազում մարդկան: Ժա_
մանակ եդ անասնոց. գիտեն զկարգ
հանգստեան. ՚ի վր̃ այսր ամ̃ի ոչ իցեն
զարմացեալ միտք քո: ո՞չ տարափիցի սիրտ
քո ՚ի մարմնի քում: ( զի արար զմեծա
մեծս՝ զոր ոչ գիտէաք. հրամանս տայ
ձեան՝ թէ լե՛ր ՚ի վր̃ երկրի: և ձմերայ
նոյ անձրևաց զզօրութիս իւրեանց: ՚ի
ձեռն ամ̃ մարդոյ կնքէ. զի ծանիցէ ամ̃
մարդ զիւր տկարութի ): *Եթէ իմա 29
նայցես զտարածել ամպոյ. և զհաւա_
սարութի խորանի նր̃: *Ահ ձգէ ՚ի վր̃ 30
նր̃ Ճանապարհաւ. և զարմատս ծովու
ծածկեաց: *Զի նոքօք դատեսցէ զժո 31
ղովուրդս. տայ՝ կերակուր զօրացե_
լոյն: *՚Ի ձեռս ծածկեաց զլոյս. և ետ 32
պատուէր վասն նորա պատահելոյ:
*Պատմեսցէ զնա բարեկամաց իւրոց. 33
և զստացուածոց՝ և զանիրաւութէ:

## Գլ. ԼԷ.

Եւ ՚ի վր̃ այնորիկ խռովեցաւ սիրտ 1
իմ. և շարժեցաւ ՚ի տեղւոջէ իւրմէ:
*Լուր զլուր ՚ի բարկութե սրտմտու_ 2
թե Տն̃. և խորհուրդ ՚ի բերանոյ նր̃
ելցէ: *՚Ի ներքոյ ամ̃ երկնից իշխա_ 3
նութի նր̃. և լոյս նր̃ ՚ի վր̃ ծագաց երկ
րի: *Զկնի նր̃ գոչեսցէ բարբառ: 4
որոտայցէ ձայնիւ բարձրութե իւրոյ.
և ոչ փոխանակեսցէ զնոսա: զի լսելի
արասցէ զձայն իւր: *Որոտասցէ 5
հզօրն սքանչելի բարբառով իւրով.
քանզի արար մեծամեծս՝ զոր ոչ գի_
տէաք: *Հրաման տայ ձեան՝ թէ լե՛ր 6
յերկրի. և ձմերայնոյ անձրևաց բռնզօ
րութե նր̃: *՚Ի ձեռին ամ̃ մարդոյ 7
կնքէ. զի ծանիցէ ամ̃ մարդ զիւր տկա
րութի: *Մտին գազանք ՚ի գաղտարս՝ 8
դադարեցին ՚ի խշտիս: *Յշտեմարանաց 9
ելանեն ցաւք. և ՚ի բարձրաւանդակաց
ցուրտ: *Եւ ՚ի շնչելոյ հզօրին տացէ 10
սառնամանիս: յեղյեղու զջուրս. որ
պէս և կամի. *Եւ զընտիր ամպ յա_ 11
նեսցէ. ցրուէ մէգ զլոյս նորա:
*Եւ ինքն դարձուսցէ վշրջանակս: 12
ուր կամեցաւ՝ եդ զգործ նր̃. և զամ̃
ինչ զոր հրամայեսցէ նր̃. սոքա կար_
գեալք են առ ՚ի նմանէ ՚ի վր̃ երկրի:
*Եթէ ՚ի խրատ՝ և եթէ յերկիր իւր: 13
եթէ յողորմութե գտցէ զնա:
*Ո՛ւնկնդիր այսմիկ յոբ. կա՛ց՝ և խրատ 14
եա՛ զզօրութի Տն̃: *Գիտեմք՝ զի 15
Ած̃ եդ զգործս իւր: լոյս արար ՚ի
16 խաւարի: *Գիտէ զքննութի ամ_
պոց: արհաւիրք են յանցանք չարա_
17 գործաց: *Եւ քո ջերմ պատմուճան
հանդարտեալ կայ ՚ի վր̃ երկրի ՚ի հա_
18 րաւոյ: *Հաստատեսցես ընդ նմա ՚ի
հնութիս. զօրացուցանել իբրև զտե_
19 սիլ եղեման: *Բայց ընդէ՞ր իսկ ահէ
ուսո՛ զիս. զի՞նչ ասասցուք նմա. և դա
դարեսցուք ՚ի բազում խօսելոյ:
20 *Մի՛ եթէ մատեան, կամ դպիր մերձ
կայցէ առ իս. զի զմարդկան գնալ լռե
21 ցուցից: *Ոչ ամենեցուն է լոյս տեսա_
նելի. փայլածու նէ ՚ի հնութիս. որպ̃
22 որ ՚ի նմանէն ՚ի վր̃ ամպոց: *՚Ի հիւսի
սոյ ամպ ոսկէճաճանչ. ՚ի վր̃ այսոցիկ
մեծ են փառք և պատիւ ամենակալին:
23 *Եւ զոյժ գտանեմք զայլոց նման զօ
րութե նր̃. որ զարդարն դատէ՝ ոչ
24 համարիցիս լսել նմա: *Վասն որոյ եր
կիցեն ՚ի նմանէ մարդիկք. երկիցեն և
՚ի նմանէ իմաստունք սրտիւք: Յետ
դադարելոյ Եղիուայ ՚ի խօսելոյ:

## Գլ. ԼԸ.

1 Ասէ Տր̃ ցՅոբ ՚ի միգէ՝ և յամպոյ.

2 Ո՞վ է դա՝ որ թաքուցանէ յինէն
զխորհուրդ. ժողովեալ զբանս ՚ի
սրտի. և համարի յինէն թաքուցա_
3 նել: *Պնդեա՛ իբրև զայր զմէջ քո.
հարցից զքեզ՝ և տո՛ւր ինձ պատասխա
4 նի: *Ո՞ւր էիր՝ մինչ ես հիմունս ար
կանէի երկրի: պատմեա՛ ինձ. եթէ խե
5 լամուտ իցես հանճարոյ: *Ո՛վ եդ
զչափ դորա, թէ գիտիցես. կամ ո՛վ
6 էարկ ՚ի վր̃ դորա զլար: *Յե՞ր վր̃ հաս
տատեցան աղխք դորա: ո՞վ է՝ որ էարկ
7 զվէմն անկեան ՚ի դմա: *Յորժամ
եղեն աստեղք ծերք՝ ամ̃ հրեշտակք
աստեղաց օրհնեցին զիս մեծաձայն:
և ամ̃ հրեշտակք իմ գովեցին:
8 *Փակեցի զծով դրամբք. յորժամ
ծնաւ յորովայնէ մօր իւրոյ ելանել:
9 *Եդի նմա զմէգ ՚ի հանդերձ. և
զմառախուղ նմա ՚ի խանձարուրս:
10 *Եդի նմա սահմանս՝ եդեալ փա_
11 կանս, և դրունս: *Ասացի՝ ցայդ վայր
եկեսցես՝ և այլ մի՛ անցանիցես: այլ
այդրէն ՚ի քեզ խորտակեսցին ալիք քո:
12 *Եթէ առ քև՞ կարգեցի զլոյսն ա_
ռաւօտուն: արուսեակն ետես զկարգ
13 իւր: *Հասանել ՚ի վր̃ թևոց երկրի:
թօթափել զամպարիշտս ՚ի նմանէ:
14 *Կամ թէ քո՞ առեալ զհողն կաւ՝ ստեղ
ծեր կենդանի՝ և խօսուն եդեր զնա
15 յերկրի: *Եւ մերժեցե՞ր զլոյսն յամ
պարշտաց. զբազուկս ամբարտաւա_
16 նից խորտակեցե՞ր: *Հասեա՞լ իցես
յակն

յակն ծովու ։ և ընդ հետս անդնդոց շրջեցար ։ 17 * Բանայցին քեզ ահիւ դրունք մահու. բարապանք դժոխոց տեսեալ զքեզ սարսեցին ։ 18 * Խելամուտ իցես լայնութեան 'ի ներքոյ երկնից. ա՛սէ պատմեա՛ որչափ իցէ ։
19 * Ո՞ր ինչ երկիր իցէ՝ յորում լոյսն ագանիցի՝ կամ զի՞նչ տեղի խաւարի ։
20 * Տանիցիս զիս 'ի սահմանս նց ։ եթէ խելամուտ իցես շաւղաց նց ։ 21 * Գիտես գիտիցես՝ և ընդ այն ժամանակս ծընեալ իցես. և թի՛ւ աւուրցքոց բազում իցեն ։ 22 * Երթեալ իցես 'ի շտեմարանս ձեան. և զգանձս կարկտի տեսեալ իցես ։ 23 * Համբարեալ կայցէ քեզ 'ի ժամանակս թշնամեաց՝ յօր մարտի՝ և պատերազմի ։ 24 * Ուստի՞ ելանիցէ եղեամն. կամ սփռիցի հարաւ 'ի ներքոյ երկնից ։
25 * Ո՞ պատրաստեաց զհոսանս սաստիկ անձրևոյ՝ և զճանապարհս ամպրոպաց տեղեալ յերկիր ։ 26 * Ուր ոչ գոյ մարդ՝ յանապատ յանմարդի ։ 27 * Յագեցուցանել զանկոխն, և զանշէն՝ և բղխեցուցանել զբոյս դալարւոյ ։ 28 * Ո՞ է հայր անձրևի. և ո՞վ է՝ որ ծնաւ զշաղս ցօղոյ ։ 29 * Յո՞յր արգանդէ ելանէ սառն՝ և զեղեամն ո՞ ծնաւ յերկինս ։ 30 * Որ իջանէ իբրև զջուր ծորեալ ։ և զերեսս երկնից ո՞ հալեաց ։ 31 * Խելամուտ իցես կարգի բազմաստեղաց. և քո բացեալ իցէ զպատրուակ հայկին ։ 32 * Եւ կամ բանայցես զմազարօթն 'ի ժամանակի իւրում ։ * Եւ զգիշերավարն 'ի վերայ վարսից իւրոց ածիցես ընդ նոսա ։
33 * Գիտիցես զշրջանս երկնից՝ կամ առ հասարակ զլեալսն 'ի ներքոյ երկնից ։
34 * Կոչիցես զամպ բարբառով. և դողութեամբ լի՛ սաստիկ ջրով լուիցէ քեզ ։
35 * Արձակիցես շանթս՝ և գնասցեն՝ և ասիցեն ցքեզ՝ թէ զի՞նչ է ։ 36 * Ո՞վ ետ կանանց իմաստութիւն ոստայնանկութեան՝ կամ հանճար նկարակերտութեան ։
37 * Ո՞ թուէ զամպս իմաստութեամբ. և զերկինս յերկիր խոնարհեցոյց ։ 38 * Եւ հեղեալ կայ իբրև զհող փոշի՝ մածուցի զնա իբրև վիմա՛ խորանարդ ։
39 * Որսայցես առիւծուց կերակուր. և զանձինս վիշապաց յագեցուցանիցես ։
40 * Մարսիցին 'ի խշտիս իւրեանց. և նստիցին դարանակալք 'ի մայրիս ։

Սաղմ. 146.9.

41 * Ո՞ պատրաստեաց ագռաւուց կերակուր՝ զի ձագք նր առ Տր աղաղակեցին. մոլորեալք խնդրեն զկերակուր ։

## Գլ ։ ԼԹ ։

1 Եթէ գիտիցես զժամանակս ծնընդեան յամուրայ քարանձաւաց ։ զզուշանայցես երկանց եղանց ։
2 * Թուիցես լի՛ով զամիսս ծննդեան նց ։ 3 լուծանիցես զերկունս նց ։ * Սնուցանիցես՝ զմանկունս նոցա առանց երկիւղի ։ մերժեսցես 'ի նոցանէ զերկունս ։
4 * Փրծանիցին որդիք նոցա՝ բազմասցին 'ի ծննդեան իւրեանց. ելանիցեն՝ 5 և անդրէն ոչ կրկնիցին ։ * Ո՞ եթող զցիռ ազատացեալ ։ ո՞ եբոյծ զկապանս 6 նորա ։ * Եդ նմա կայանս զանապատ. և բնակութիւս նմա զաղտաղտուկս ։
7 * Ծաղր առնէ զբազմամբոխ քաղաքաց. և զբամբասանս հարկահանաց 8 ոչ լսէ ։ * Դիտէ զլերինս արօտի իւրոյ. և զհետ ամ դալարւոյ շրջի խնդրել ։
9 * Եթէ կամիցի քեզ միեղջերուն ծառայել՝ կամ հանգչիլ առ մսուր քո ։
10 * Կապիցես սամետիք լուծ նմա. կամ 11 ձգիցէ ակօս 'ի դաշտի քում ։ * Յուսասցիս 'ի նա՝ զի բազում է զօրութի նր ։ և թողուցուս 'ի նա զամ գործս քո ։
12 * Հաւատայցես, թէ հատուցանիցէ քեզ զսերմանիս. և ամփոփիցէ զկալ 13 քո ։ * Թևք թռուցելոց նէեղասաց ։ եթէ յղասցի ասիդն և նէեսայն ։
14 * Որ արկցէ յերկիր զձուս իւր՝ և ջե15ռուսցէ ընդ հողով ։ * Եւ մոռացաւ թէ ոտք ցրուիցէ. և գազանք անապա16տի կոխեսցեն ։ * Խստացաւ յորդւոց իւրոց՝ իբրև ո՛չ յիւրմէ ։ 'ի զուր վաս17տակեցաւ առանց երկիւղի ։ * Որ լռեցոյց Ած 'ի նմանէ զիմաստութի. և ոչ 18 ետ նմա բաժին 'ի հանճարոյ ։ * Ի ժամանակի բարձրասցի 'ի բարձունս. ծաղր արասցէ զերիվարաւ՝ և զհեծե19լով նորա ։ * Եթէ դու ագուցեր ձիոյ զզօրութի. և զգեցուցեր զահս զպա20րանոցաւ նր ։ * Արկեր զնովաւ սպառազինութի ։ զփառս լանջաց նր զան21դգնութի ։ * Որոտայ 'ի դաշտի՝ և դափր հատանէ. ելանէ 'ի դաշտ զօրութբ ։
22 * Պատահեալ նետից՝ արհամարհէ. և 23 ո՛չ դարձցի յերկաթոյ ։ * Ի վր նորա շողան աղեղն՝ և սուսեր. և շարժին 24 վահանի՝ և նիզակի ։ * Եւ բարկութբ ապականէ զերկիր. և ոչ հաւատայ՝ մին25չև փող հարկանիցի ։ * Եւ իբրև փող հարկանի. նա վաշ վաշ կարդայ ։ 'ի հեռաստանէ առնու զհոտ պատերազմի ։
26 վազս առնելով և փռնչելով ։ * Եթէ 'ի քումմէ իմաստութէ եկաց բազէ տարածեալ զթևս. անշարժ դիտէ ընդ 27 հարաւ ։ * Կամ թէ քով հրամանաւ վերանայ արծուի ։ և անգղ 'ի վր բու28նոյ իւրոյ նստեալ դադարիցի ։ * Ի քա29րանձաւս վիմաց և 'ի ծակուկս ։ * Անդ կայ՝ և խնդրէ զկերակուր ։ 'ի հեռաս30տանէ դիտեն աչք իւր ։ * Եւ ձագք նորա արեամբ թաթաւին ։ ուր ուրեք

իցէ

իցէ դէշ. անդ վաղվաղակի գտանին ։
31 *Եւ պատասխանի ետ Տր Ա.ծ յոբայ՝ և ասէ ։ 32 *Մի թէ զդատաստան ոք բաւականին թիւրիցէ. և յանդիմանես ցէ զԱ.ծ . և տայցէ նմա պատասխանի ։
33 *Արձնեալ անդրէն յոբայ՝ ասէ ցՏէր ։
34 *Զի՞ ևս տակաւին դատիցիմ կշտամ բեալ և յանդիմանեալ . 'ի Տէ լսեմ զայդպիսի բանս ։ 35 զի ես ոչինչ եմ, զի՞նչ տաց առ այդ պատասխանի. բայց եթէ ա՛ի բերան լինիցիմ ։ 36 *Մի ան գամ խօսեցայ . և յերկրորդումն ոչ յաւելից ։

## Գլ ։ Խ ։

Դարձեալ հրճնեալ Տն յամպոյն՝ ասէ ցյոբ ։ 1

Ո՛չ այդպէս, այլ պնտեա՛ իբրև զայր զմէջ քո . ես հարցից՝ և դու տո՛ւր ինձ պատասխանի ։ 3 *Մի՛ զրնկենուր զդատաստանս իմ. և մի՛ համարիր այլ-ազգ արարեալ առ քեզ յայտնութիւն . բայց թէ զի երևեսցիս արդար ։
4 *Եթէ բազուկ առ բազուկ իցէ քո Տն ։ Եթէ բարբառ հանդոյն նմա որո տայցես ։ 5 *Առ ա՛ղէ ա՛ռ զբարձրու թիւն . և զզօրութիւն . և զփառս՝ և զպատիւ զգեցի՛ր ։ 6 *Առաքեա՛ զհրեշտակս բար կութբ . և զամ հպարտս խոնարհեցո՛ ։ 7 և շիջո՛ զամբարտաւանս ։ * Փոխեա՛ վաղվաղակի զամպարիշտս ։ 8 *Եւ ծած կեա՛ յերկրի բացեայ 'ի բաց առ հասա րակ . և լի՛ց զերեսս նց անարգանօք ։
9 *Նակ յանձին կալայց արդեօք՝ թէ կա րօղէ փրկել աջ քո ։ 10 *Նակ այդ քո առա ջի իցէ . զի գազանք իբրև զարջառ խո տաձարակին ։ 11 *Ահաւանիկ ոյժ իւր զմիջով իւրով . և զօրութիւն զպորտիւ որովայնի իւրոյ ։ 12 *Կանգնեաց զտուտ իւր իբրև զնոճի . ջիլք իւր զմիմեամբք պատեալ ։ 13 *Կողք իւր պղնձիք . և ողն իւր ձոյլ երկաթոյ ։ 14 *Նա է սկիզբն արարածոց Տն . արարեալ 'ի խաղալիկ հրեշտակաց նր ։ 15 *Հասեալ 'ի վր առա պար լերին . արար խնդութիւն չորքոտա նեաց 'ի տարտարոսն ։ 16 *Ընդ ազգի ազգի ծառովք ննջէ . առ պրտո՛վ և եղեգամբ և կնիւնով ։ 17 *Հովանա ցան ընդ նմա ծառք մեծամեծք . հանդերձ անտառովք և ձողք հադ-նւոյ ։ 18 *Եթէ լինիցի հեղեղ, ոչ զգաս ցէ . յանձնապաստան է . զի թէ յոր դանան դիմեսցէ 'ի բերան նորա ։
19 *Յականակապիճ իւր ընկալցի զնա ։ 'ի խուսափիլ նր ծակիցես զռնգունս նորա ։ 20 *Վերացուցանիցես զվիշապն կարթիւ . դնիցես պախուրց շուրջ զցռու կաւ նորա ։ 21 *Եթէ կապիցես անուր 'ի քիթ նր . անցուցանիցես զանդա ւանդ ընդ կզակս նորա ։ 22 *Խօսիցի ընդ քեզ հնազանդութբ . և կակուղ բարբառով դնիցէ ընդ քեզ ուխտ ։
23 *Նուաճիցես զնա ծառայ յաւիտե նական ։ 24 *Խաղայցես դու նովաւ իբ րև ընդ հաւու . և կապիցես զնա իբրև զձագ կապով ։ 25 *Սերակրեսցին նովաւ ազինք՝ և բաժանեսցեն զնա ազգք փիւնիկեցւոց ։ 26 *Ամ նաւաղօղակն 'ի [illegible] մի վայր ժողովեալ ոչ բարձցեն թեփ [illegible] մի 'ի տոնոյ նորա . և 'ի նաւս ձկնորսաց խալամ նր ։ 27 *Դնիցես դու զձեռն քո 'ի վր նր . յիշատակեալ զպատերազմն որ լինելոցն է 'ի մարմնի նր . զի այլ ոչ ևս լինիցի ։ 28 *Ոչ տեսեր զնա . և ոչ 'ի վր բանիցս ասացելոց զարմանայցես ։

## Գլ ։ ԽԱ ։

1 Ո՞չ երկնչիցես . զի և ինձ պատրաս տեալ է . բայց ո՞վ իցէ՝ որ ինձ հա կառակ կայցէ . կամ ո՞վ իցէ՝ որ ինձ ընդդէմ դառնայցէ՝ և հանդարտիցի ։
2 *Եթէ ամ առ 'ի ներքոյ երկնից իմ են ։ 3 *Ոչ լռեցից 'ի վն նորա . և բան հզօրին 4 ողորմեսցի զուգականին նորա ։ *Ով մերկասցի զպատրուճակ երեսաց նր . և ընդ ալս պատենից նորա ո՞ մտանիցէ ։
5 * Զդրունս երեսաց նր ո՞ բանայցէ . 6 շուրջ զատամամբք նորա ահ ։ * Փոր նորա վահանք պղնձիք . յօդք նր իբրև 7 վէմ գայլախազ ։ * Մի ի զմիոյ զկնի կցեալ . և օդ ոչ անցցէ ընդ նա . այլ 8 զեղբօր զհետ երթիցէ ։ * Զմիմեանս 9 կալցին . և մի՛ մեկնեսցին ։ *'Ի փռնչե լոյ նր փայլատակունք հատանին . աչք 10 նորա իբրև զտեսիլ արուսեկի ։ *'Ի բե րանոյ նր դ՛ամբարք բորբոքեալք . և հա 11 տանին՝ անկանին շանթք հրոյ ։ *Ընդ ռնգունս նր ծուխ ելանէ հնոցի՝ հրոյ 12 կայծականց ։ *Անձն նր կայծակունք . 13 և բոց 'ի բերանոյ նր ելանէ ։ *'Ի պա րանոցի նորա բնակի զօրութիւն . առաջի 14 նորա կորուստ ընթանայ ։ *Անդամք մարմնոյ նորա մածեալք . եթէ զեղցին 15 'ի վր նորա՝ ոչ խլրտեսցի ։ * Զի սիրտ նորա սալացեալ է իբրև զվէմ . և հաս տատեալ կայ իբրև զսալ դարբնաց ան 16 շարժ ։ *'Ի խլրտիլ նորա ա՛հ գազանաց . և չորքոտանեաց զեռնոց երկրի ։
17 *Եթէ պատահեսցին նմա արդունք, 18 ոչ մտանեն զէնք և նիզակք ։ *Անզի համարի զերկաթ յարդ . և զպղինձ իբ 19 րև զփայտ փտեալ ։ *Ոչ խոցոտէ զնա ա ղեղն պղնձի . համարի զումբաքար խոտ ։
20 *Եւ իբրև զեղէգն համարեսցին նմա ուռունք . ծաղր առնէ զշարժումն հրա 21 ւէրց ։ *Ընկողինք նորա տէգք սրեալք ։
ամ

ամ ոսկի ծովու ը նոխաւ իբրև զկաւ անբաւ։ 22 * Նշաւացուցանէ զանդունդս իբրև զկաստայ. համարի զծով իբրև զոչինչ։ 23 * Եւ զտարտարոսն անդնդոց իբրև զգերի մի. համարեցաւ զանդունդս իւր ձեմելի։ 24 * Եւ չիք յերկրի՝ որ նմանի նմա. արարեալ խաղալիկ հրեշտակաց իմոց։ 25 * Զամ բարձունս տեսանէ. և ինքն է թագաւոր ամի՝ որք ՚ի ջուրսն են։

## ԳԼ. ԽԲ.

1 Պատասխանեալ անդրէն յոբայ՝ ասէ ցՏր։ 2 Գիտեմ, զի կարող ես յամի. և տկարանայ ինչ ոչ քեզ։ 3 * Ո՞վ է՝ որ ծածկէ ՚ի քէն զխորհուրդ. խնայեալ ՚ի բանս. կարծիցէ թաքուցանել յամ. պատմեսցէ ինձ. զոր ոչ գիտէի, զմեծամեծս և զզարմանալիս՝ որոց ոչ էի տեղեակ։ 4 * Լուր լուր ինձ Տր՝ զի և ես խօսեցայց. հարցից զքեզ՝ և դու ուսո զիս։ 5 * Ի լուր ականջաց լսէի զքէն յառաջագոյն. բայց արդ՝ և ակն իմ իսկ ետես զքեզ։ 6 * Վասն որոյ խոտեցի զանձն՝ և հալեցայ. և համարիմ զանձն իմ հող և մոխիր։ 7 * Եւ եղև յետ խօսելոյ Տն զբանս զայսոսիկ ընդ Յոբայ. ասէ Տէր ցԵղիփազ Թեմնացի. մեղար դու. և երկոքին բարեկամք քո. զի ոչ խօսեցայք առաջի իմ ճշմարիտ՝ և ոչ ինչ իբրև զծառայ իմ զյոբ։ 8 * Բայց արդ՝ առէք զուարակս եօթն. և խոյս եօթն. և երթայք առ ծառայ իմ յոբ. և արասցէ ողջակէզս վն ձեր. և յոբ ծառայ իմ արասցէ աղօթս վն ձեր. զի թէ ոչ նմա ակն առեալ էր. և եթէ ոչ վասն նորա էր. կորուսեալ էր իմ արդեօք զձեզ. զի ոչ խօսեցայք ճշմարտութիւն զծառայէ իմմէ զյոբայ։ 9 * Եւ գնաց Եղիփազ Թեմնացի. և Բաղդատ Սօքեցի. և Սոփար Մինեցի. և արարին՝ որպէս հրամայեաց նց Տր. և եթող զմեղս նց վն յոբայ։ 10 * Եւ Տր աճեցոյց զյոբ. և յառնել նր աղօթս ՚ի վր բարեկամացն եթող զմեղս նց։ և ետ Տր կրկին՝ քան որչափ ինչ էր յառաջագոյն յոբայ ՚ի յաճախութեն։ 11 * Եւ լուան ամ եղբարք նր՝ և քորք նորա՝ զամ անցսն, որք անցին ընդ նա. և եկին առ նա. և ամենեքին՝ որք յառաջագոյն գիտէին զնա. կերին և արբին առ նմա. և մխիթարեցին զնա. և զարմացան ՚ի վր ամի. զոր էած ՚ի վր նր Տր. և ետուն նմա իւրաքանչիւր մէն մի որոջ. և չորեք դրամեան մի ոսկի անդրի։ 12 * Եւ Տր օրհնեաց զվերջինսն յոբայ քան զառաջինսն. և էին խաշինք նր՝ ոչխարք բիւր. և չորեքհազարիւր ուղտք վեցհազարք։ լուծք եզանց հազար։ էշք մատակք արօտականք հազարք։ [Margin: և չորս հազար] 13 * Եւ ծնան նմա ուստերք եօթն. և դստերք երեք։ 14 * Եւ կոչեաց զառաջինն տիւ. և զերկրորդն կասիա. և զերրորդն մաղթեղջիւր։ 15 * Եւ ոչ գտան համեմատ դստերացն յոբայ աղնուագոյնք ՚ի ներքոյ երկնից. և ետ նց ժառանգութիւն ընդ եղբարս իւրեանց։ 16 * Եւ եկեաց յետ հարուածոցն ամն հարիւր և եօթանասուն։ և ամ ամք զորս եկեաց էր կերիւր քառասուն և ութն. և ետես յոբ զորդիս իւր՝ և զորդիս որդւոց իւրոց ազգ չորրորդ. և վախճանեցաւ յոբ ծերացեալ և լցեալ աւուրբք։

(Եւ գրեալ է նմա յառնել ընդ որս Տր յարուցանէ։ սա թարգմանի յասորի գրոց. բնակէր յերկրին աւսիտացւոց. ՚ի սահմանս եդովմացւոց և արաբացւոց։ յառաջ էր անուն նր յոբաբ. և առեալ կին արաբացի. ծնաւ որդի. որում անուն էր Ենոն։ և էր հայր նր զարեհ. որդի որդւոյն եսաւայ։ և մայր նր բոսորացի։ որում և նա եղև իշխան աշխարհին. որպէս զի լինիլ նմա հինգերորդ յաբրահամէ։ և այս են թագաւորք. որք թագաւորեցին յեդոմ՝ առաջին բաղակ բէօրայ. և անուն քաղաքին նորա դէնաբայ։ յետ բաղակայ յոբաբ՝ որ կոչեցաւ յոբ։ յետ նորա ասոմ՝ որ էր զօրավար յերկրէն թեմանացւոց։ յետ նր ադադ որդի բարադայ՝ որ կոտորեաց զմադիամ ՚ի դաշտին մովաբայ. և անուն քաղաքին նր գեթեմ։ և որք եկին առ նա բարեկամքն. եղիփազ յորդւոցն եսաւայ. բաղդադ բռնաւոր սօքեցւոց. սոփար արքայ մինեցւոց։)



Եւ էառ Սամուէլ զեղջիւրն իւղոյ, և էօծ զԴաւիթ, և խաղաց հոգի Տն ՚ի Դւթ։ 1. Թագ. 16. 13.



Եւ Դաւիթ, և որդիքն Իսրայէլի խաղային առաջի տապանակին Տն։ 2. Թագ. 6. 5.

# ԳԻՐՔ ՍԱՂՄՈՍԱՑ.

Սաղմոս Անվերնագիր։

ԵՐԱՆԵԱԼ Է ԱՅՐ · ՈՐ՝ ոչ գնաց ՚ի խորհուրդս ամպարշտաց. ՚ի ճանապարհի մեղաւորաց ոչ եկաց. և յաթոռս ժանտից ոչ նստաւ ։ * Այլ յօրէնս Տն են կամք նր. և յօրէնս նորա խորհեսցի նա ՚ի տուէ և ՚ի գիշերի ։ * Եւ եղիցի նա որպէս ծառ. որ տնկեալ է ՚ի գնացս ջուրց ։ Որ զպտուղ իւր ՚ի ժամու տացէ. տերև նորա մի թափեսցի. և զամ գործս և առնիցէ, յաջողեսցի նմա ։ * Ոչ այսպէս են ամպարիշտք՝ և ոչ այսպէս · այլ որպէս հողմ զփոշի զի հոսէ յերեսաց երկրի ։ * Վասն այսորիկ ոչ յարիցեն ամպարիշտք ՚ի դատաստանի. և ոչ մեղաւորք ՚ի խորհուրդս արդարոց ։

(1, 2, 3, 4, 5 — Յեսու. 1. 8. — Երեմ. 17. 8.)

6 * Զի գիտէ Տր զճանապարհս արդարոց. ճանապարհք ամպարշտաց կորիցեն ։

Անվերնագիր ՚ի հեբրայեցւոց երկոքեան առաջինք ընդ մի համար են։ Բ։

1 Ընդէ՞ր ‖ խռովեցան հեթանոսք . և ժողովուրդք խորհեցան ունայնս ։
2 * Յարեան թագաւորք երկրի. և իշխանք ժողովեցան ՚ի միասին՝ ՚ի վերայ Տն և ՚ի վ օծելոյ նր ։
3 * Խզեսցուք զկապանս նց . և ընկեսցուք ՚ի մէնջ զլուծ նց ։
4 * Բնակեալն յերկինս ծիծաղեսցի զնոքօք . և Տր արհամարհեսցէ զնս ։
5 * Յայնժամ խօսեսցի ընդ նոսա բարկութբ իւրով . և սրտմտութբ իւրով խռովեցուսցէ զնս ։
6 * Ես կացի թագաւոր ՚ի նմանէ ՚ի վերայ սիոնի լերին սրբոյ նորա ։ ՚ի պատմել զհրամանս Տն ։
7 * ‖ Տէր ասաց ցիս՝ որդի իմ ես դու . և
8 ես այսօր ծնայ զքեզ ։ * Խնդրեա՛ յինէն՝ և տաց քեզ զհեթանոսս ՚ի ժառանգութի . և իշխանութի քեզ զամ ծագս

(Գործ. 4. 25. — Վ. Է. — Գործ. 13. 33. — Եբրայ. 1. 5. և 5. 5.)

ծագս երկրի։ 9 *Հովուեսցես զնոսա գաւազանաւ երկաթեաւ. որպէս զանօթ բրտի փշրեսցես զնս։ 10 *Եւ արդ թագաւորք, զայս 'ի միտ առէք. և խրատեցարուք ամենեքեան՝ որք դատէք զերկիր։ 11 *Ծառայեցէք Տն երկիւղիւ. և ցնծացէք առաջի նր դողութբ։ 12 *Ընկալարուք զխրատ նորա. զի մի բարկասցի Տէր. և կորնչիցիք 'ի ճանապարհացն արդարութե։ 13 *'Ի ժամանակի յորժամ բորբոքեսցի բարկութի նր։ Երանի ամենեցուն՝ որք յուսացեալք են 'ի նա։

Յայտ. 2.27. և 19.15.

1 Սաղմոս Դաւթի 'ի ժամանակի զի փախուցեալ էր յերեսաց աբիսողոմայ որդւոյ իւրոյ։ Գ։

Բ. Թագ. 15.14.

2 ՏԷՐ՝ զի բազում եղեն նեղիչք իմ. և բազումք յարեան 'ի վերայ իմ։ 3 *Բազումք ասէին զանձնէ իմմէ. թէ չիք փրկութի նորա առ Ած իւր։ 4 *Այլ դու Տր օգնական իմ ես. փառք իմ, և բարձրացուցիչ գլխոյ իմոյ։ 5 *Ձայնիւ իմով ես առ Տր կարդացի. և լուաւ ինձ 'ի լեռնէ սրբոյ իւրմէ։ 6 *Ես ննջեցի՝ և 'ի քուն եղէ. զարթեայ՝ և Տէր ընդունող իմ էր։ 7 *Ոչ երկեայց ես 'ի բիւրուց զօրացն նց՝ որք շուրջանակի պատեալ՝ պաշարեալ պահէին զիս։ Արի Տէր՝ և փրկեա զիս Ած իմ։ 8 * Զի դու հարեր զամենեսեան՝ որք էին ընդդէմ թշնամութբ 'ի տարապարտուց՝ զատամունս մեղաւորաց փշրեցեր։ 9 *Տնէ փրկութի. 'ի վերայ ժողովրդեան քոյ օրհնութի քո։

1 'Ի կատարած ընդ օրհնութե. Սաղմոս Դաւթի։ Դ։

2 Ի կարդալ իմում լուաւ ինձ Ած արդարութե. 'ի նեղութե ինձ անդորր արարեր՝ ողորմեա ինձ. և լուր աղօթից իմոց։ 3 *Որդիք մարդկան՝ մինչև յերբ էք խստասիրտք. ընդէր սիրէք զնանրութի. և խնդրէք զսուտ։ 4 *Ծաներուք՝ զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. Տէր լուիցէ ինձ 'ի կարդալ իմում առ նա։ 5 *Բարկանայք՝ և մի մեղանչէք. զոր ինչ ասէք 'ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք։ 6 *Զոհեցէք պատարագ արդարութե. և յուսացարուք 'ի Տր։ Բազումք ասէին՝ թէ ով ցուցցէ մեզ զբարութի Տն։ 7 *Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց։ Ետուր ուրախութի սրտից մերոց։ 8 *'Ի պտղոյ ցորենոյ՝ գինւոյ՝ ձիթոյ՝ նոքօք լցուցեր զմեզ։ 9 *Խաղաղութբ յայս և 'ի սմին ննջեցից և զարթեայց։ 10 *Զի դու Տր միայն առանձինն յուսով քով բնակեցուցեր զմեզ։

Եփես. 4.26.



1 'Ի կատարած. վասն ժառանգաւորին. Սաղմոս Դաւթի։ Ե։

2 Բանից իմոց ունկն դիր Տր. և 'ի միտ առ զաղաղակ իմ։ 3 *Նայեաց 'ի ձայն աղօթից իմոց. թագաւոր իմ և Ած իմ։ 4 *Առ քեզ աղաչեմ Տր. ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում։ 5 * Ընդ առաւօտս պատրաստ եղէց. յանդիման լինիլ առ քեզ։ Ոչ թէ դու այն Ած ես՝ որ կամիս զանօրէնութի։ 6 *և ոչ բնակին առ քեզ չարք։ Անօրէնք մի բնակեսցին առաջի աչաց քոց։ 7 *Ատեցեր զամենեսին. որք գործեն զանօրէնութի. կորուսանես զամենեսեան. որք խօսին սուտ։ Զայր արիւնահեղ՝ և զնենգաւոր՝ պիղծ առնես դու Տր։ 8 *այլ ես ըստ բազում ողորմութե քում մտից 'ի տուն քո. և երկիր պագից 'ի տաճար սուրբ քո երկիւղիւ քո։ 9 * Տր առաջնորդեա ինձ յարդարութե քում, վն թշնամեաց իմոց. և ուղիղ արա առաջի իմ զճանապարհս քո։ 10 * Զի ոչ գոյ 'ի բերանս նց ճշմարտութի. և սիրտք նոցա նանրեալք են։ 11 *Գերեզման բաց է կոկորդ նց. և լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն. դատեա զնոսա Ած՝ զի անկցին 'ի խորհրդոց իւրեանց. ըստ բազում ամբարշտութե նց մերժեա զնոսա. զի դառնացուցին զքեզ։ 12 *Ուրախ լիցին ամենեքեան՝ որք յուսացեալք են 'ի քեզ. յաւիտեան ցնծասցեն. և բնակեսցիս դու 'ի նոսա։ Պարծեսցին 'ի քեզ սիրելիք անուան քոյ։ 13 * Զի օրհնեսցես դու զարդարն. Տէր՝ որպէս զինու հաճութե քով պսակեցեր զմեզ։

Սաղմ. 13.3. Հռոմ. 3.13.

1 'Ի կատարած. ընդ օրհնութե վասն ութերորդ աւուրն։ Սաղմոս Դաւթի։ Զ։

2 ՏԷՐ մի սրտմտութբ քով յանդիմաներ զիս. և մի բարկութբ քով խրատեր զիս։ 3 *Ողորմեա ինձ Տր՝ զի հիւանդ եմ ես. բժշկեա զանձն իմ, զի խռովեցան ոսկերք իմ։ 4 * Անձն իմ յոյժ խռովեցաւ. և դու Տէր մինչև յերբ։ 5 *Դարձ Տէր. և փրկեա զանձն իմ. կեցո զիս Տէր ըստ ողորմութե քում։ 6 * Զի ոչ ոք է. որ 'ի մահու յիշէ զքեզ. կամ 'ի դժոխս ոք խոստովան առնի առ քեզ։ 7 * Վաստակեցայ ես 'ի հեծութե իմում. լուացի զամ գիշեր զմահիճս իմ. և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի։ 8 *Խռովեցաւ 'ի սրտմտութե ակն իմ. և մաշեցայ ես 'ի վն ամ թշնամեաց իմոց։ 9 * 'Ի բաց կացէք յինէն ամենեքեան. որք գործէք զանօրէնութի։ 10 * Լուաւ Տէր ձայնի լալոյ իմոյ.

Մատթ. 7.23. և 25.41. Ղուկ. 13.27.

լուաւ Տ՟ր աղօթից իմոց. և Տ՟ր զխնդրուածս իմ ընկալաւ։ 11 * Ա՟մաչեսցեն և խռովեսցին յոյժ ա՟մ թշնամիք իմ. դարձցին յետս, և ամաչեսցեն յոյժ վաղվաղակի. և խռովեսցին։

1 Սաղմոս Դաւթի. զոր ասաց Տ՟ն վասն բանիցն քուսեայ. որդւոյ յեմենեայ։ Է.

2 ՏՐ Ա՟ծ իմ՝ ի քեզ յուսացայ. փրկեա՛ զիս յա՟մ հալածչաց իմոց. և ապրեցո՛ զիս։ 3 * Գուցէ երբեք յափշտակիցէ ո՟պ առիւծ զանձն իմ. ուրեք իցէ, որ փրկիցէ. և ոչ այն, որ ապրեցուցանիցէ։ 4 * Տ՟ր Ա՟ծ իմ. թէ արարի զայս. և թէ իցեն անօրէնութիւնք ՚ի ձեռս իմ։ 5 * Թէ հատուցի երբեք այնոցիկ. ոյք հատուցին ինձ չարութիւն, անկեայց և ես ՚ի թշնամեաց իմոց ընդունայն։ 6 * Հալածեսցէ ապա թշնամին զանձն իմ. հասցէ, և կոխեսցէ յերկիր զկեանս իմ. և զփառս իմ՝ ՚ի հող բնակեցուսցէ։ 7 * Արի՛ Տ՟ր բարկութ՟բ քով. և բա՛րձր լեր ՚ի սպառել թշնամեաց իմոց։ Զարթի՛ր Տ՟ր Ա՟ծ իմ ՚ի հրամանս քո. զոր պատուիրեցեր։ 8 * և ժողովք ժողովրդոց շուրջ եղիցին զքև։ Ա՟ն այսորիկ ՚ի բարձունս դարձ Տ՟ր։ 9 * և Տ՟ր դատէ զժողովուրդս իւր։ Դատ արա ինձ Տէր ըստ արդարութե՟ իմում. ըստ անմեղութե՟ իմում, որ է յիս։ 10 * Կատարեսցին չարիք ՚ի մ՟ղ մեղաւորաց՝ և յաջողեսցես դու արդարոյ։ ‖ Որ քննէ զսիրտս և զերիկամունս Ա՟ծ արդար իրաւ։ 11 * օգնութի իմ յԱ՟յ. որ ապրեցուցանէ զայնոսիկ. ոյք ուղիղք են սրտիւք։ 12 * Ա՟ծ դատաւոր արդար՝ հզօր՝ և երկայնամիտ. որ ոչ ածէ զբարկութի իւր զօրհանապազ։ 13 * Ա՟պա թէ ոչ դառնայք առ նա. զսուր իւր սրեալ է. և զաղեղն իւր լարեալ։ 14 * և ՚ի նմա պատրաստեալ է զանօթս մահու. և զնետս իւր այրեցելովք է գործեալ։ 15 * ‖ Ահաւասիկ երկնեաց զանօրէնութի. յղացաւ զցաւս. և ծնաւ զանիրաւութիւն։ 16 * Գուբ՝ զոր փորեաց՝ և պեղեաց. ՚ի նոյն անկցի ՚ի խորխորատ. զոր գործեաց։ 17 * Դարձցին ցաւք ՚ի գլուխ ն՟ր. ՚ի վերայ գագաթան նորա անօրէնութիւնք իւր իջցեն։ 18 * Խոստովան եղէց Տ՟ն ըստ արդարութե՟ նորա. սաղմոս ասացից անուան Տ՟ն բարձրելոյ։

1 ՚Ի կատարած ՚ի վերայ հնձանացն սաղմոս Դաւթի։ Ը։

2 ՏՐ Տ՟ր մեր՝ զի սքանչելի է անուն քո յա՟մ երկրի։ Համբարձաւ մեծվայելչութի քո ՚ի վերայ քան զերկինս։ 3 * ՚Ի բերանոյ մանկանց՝ տղայոց ստնդիեաց հաստատեցեր զօրհնութիւն։ Ա՟ն թշնամեաց քոց Տ՟ր. զի եղծցի թշնամին և հակառակորդն։ 4 * Տեսից զերկինս զգործս մատանց քոց. զլուսին և զաստեղս՝ զորս դու հաստատեցեր։ 5 * Ո՞վ է մարդ՝ զի յիշես դու զնա. կամ՝ որդի մարդոյ. թէ այց առնես դու նմա։ 6 * ‖ Փոքր ինչ խոնարհ արարեր զնա քան զհրեշտակս քո. փառօք 7 և պատուով պսակեցեր զնա։ * և կացուցեր զնա՝ ՚ի վերայ ձեռակերտաց քոց։ 8 * ‖ Ա՟մ ինչ հնազանդ արարեր ՚ի ներքոյ ոտից նորա՝ զխաշն՝ և զարջառ՝ և զա՟մ ինչ։ 9 * Նաև՝ և զերեվայրի. զթռչունս երկնից. և զձկունս ծովու. որք շրջին ընդ շաւիղս ծովու։ 10 * Տէր Տէր մեր. զի սքանչելի է անուն քո յամենայն երկրի։

Դ՛ Թագուց
Ա. Թագ. 16.7. Ա. Մնաց. 28.9. Երեմ. 11. 20. և 17.10 և 20.12
Յոբ. 15. 35. Եսայ. 59.4.
Եբրայ. 2. 7. Ծննդ. 1. 28. Ա. Կորն. 15. 26.

1 ՚Ի կատարած. վասն գաղտնեացն որդւոյ. Սաղմոս Դաւթի։ Թ.

2 ԳՈհացայց զքէն Տէր բոլորով սրտիւ իմով. պատմեցից զա՟մ սքանչելիս քո։ 3 * Ուրախ եղէց՝ և ցնծացայց ՚ի քեզ. սաղմոս ասացից անուան քում բարձրեալ։ 4 * ՚Ի դառնալ յետս թշնամեաց իմոց տկարասցին. և կորիցեն յերեսաց քոց։ 5 * Արարեր զդատաստանս իմ. և զիրաւունս իմ. նստար յաթոռ՝ դատաւոր արդարութե՟։ 6 * Սաստեցեր ՚ի հեթանոս՝ և կորեաւ ամբարիշտն. զանուանս նոցա ջնջեցեր յաւիտեանս յաւիտենից։ 7 * և թշնամւոյն զէն պակասեցաւ մինչև իսպառ։ Զքաղաքս աւերեցեր. և կորեաւ յիշատակ նոցա աղաղակաւ։ Ա՟ծ կայ՝ և 8 մնայ յաւիտեան։ * պատրաստ արար զաթոռ իւր ՚ի դատաստանի։ 9 * Նա՟ դատէ զաշխարհս արդարութ՟բ. և 10 զժողովուրդս իւր ուղղութ՟բ։ * Եղև Տ՟ր ապաւէն տնանկի. օգնական ՚ի նեղութե, ՚ի դէպ ժամանակի։ 11 * Յուսասցին ՚ի քեզ ամենեքեան՝ ոյք գիտեն զանուն քո. զի ո՛չ թողցես զայնոսիկ. 12 որք խնդրեն զքեզ Տ՟ր։ * Սաղմոս ասացէք Տ՟ն. որ բնակեալն է ՚ի սիոն. պատմեցէ՛ք ՚ի հեթանոս զգործս նորա։ 13 * ՚Ի խնդրել զարիւն ն՟ց՝ յիշեաց. և ոչ մոռացաւ զաղաղակս տնանկաց։ 14 * Ողորմեա՛ց ինձ Տ՟ր՝ և տես զխոնարհութի իմ ՚ի թշնամեաց իմոց։ 15 * Ո՛ բարձր արարեր զիս ՚ի դրանց մահու։ Ո՟պ պատմեցից զա՟մ օրհնութիս քո ՚ի 16 դրունս դստեր սիոնի։ * ցնծացայց ՚ի փրկութե քում։ Ընկլան հեթանոսք յապականութե՟ իւրեանց՝ զոր արարին. և որոգայթ՝ զոր թաքուցին. ա

ցէ զոտս նր։ *Ճանաչի Տէր առնել 17 զդատաստանս իւր. և'ի գործս ձեռաց իւրեանց կապեցին մեղաւորք։ *Դարձցին մեղաւորք անդրէն 'ի դը 18 ժոխս. և ամ հեթանոսք. որք մոռացան զԱծ։ *Զի ոչ իսպառ մոռանայ 19 Տր զաղքատն. և համբերութի տնանկաց մի կորիցէ իսպառ։ *Արի Տր և 20 մի զօրասցի մարդ. դատեսցին հեթանոսք առաջի քո *Կարգեա Տր օրէնս- 21 դիր 'ի վերայ նոցա. ծանիցեն հեթանոսք՝ թէ մարդիկ են։

Սաղմոս Ժ։ ըստ Եբրայեցւոցն։

1 Ընդէ՞ր Տէր՝ կայցես 'ի հեռաստանէ. անտես արարեր 'ի դէպ նեղութե ժամանակի։ 2 *Յամբարտաւանել ամբարշտին այրի աղքատն. արգելցին 'ի խորհուրդս իւրեանց. զոր և խորհեցան։ 3 *Զի գովի մեղաւորն 'ի ցանկութի անձին իւրոյ. որ զրկէն. նա գովի։ 4 *Բարկացոյց մեղաւորն զԱծ. ըստ բազում բարկութե իւրում թէ ոչ խնդրի։ 5 *Ոչ է Ած առաջի աչաց նր. պղծեալ են ճանապարհք նր յամ ժամ. բարձեալ են իրաւունք յերեսաց նր. 'ի վերայ ամ թշնամեաց իւրոց տիրեսցէ։ 6 *Ասաց 'ի սրտի իւրում, թէ ոչ սասանեցայց յազգէ յազգ առանց չարի։ 7 *‖Անիծիւք, և դառնութբ, և նենգութբ լի է բերան նորա. 'ի ներքոյ լեզուի նորա ցաւք և վաստակք։ 8 *Նստի դարանեալ ընդ մեծամեծս 'ի գաղտնիս՝ սպանանել զանմեղն։ 9 *Աչք նորա 'ի տնանկս հային՝ վարանի 'ի գաղտնիս. որպէս զառիւծ 'ի մօրւոջ իւրում։ Դարանի յափշտակել զաղքատն. յափշտակել զաղքատն՝ և ձգել զնա։ 10 *Յորոգայթ իւր խոնարհեցուսցէ զնա. խոնարհեսցի՝ և անկցի 'ի տիրելն իւրում 'ի վերայ տնանկաց։ 11 *Ասաց 'ի սրտի իւրում թէ մոռացաւ Ած. դարձոյց զերեսս իւր՝ զի մի տեսցէ իսպառ։ 12 *Արի Տէր Ած իմ. բարձր եղիցի ձեռն քո. և մի մոռանար զտնանկս։ 13 *Իսկ ընդէ՞ր բարկացոյց ամբարիշտն զԱծ. զի ասաց 'ի սրտի իւրում թէ ոչ քննի։ 14 *Տեսանես դու զնա 'ի ցաւս. և 'ի սրտմտութի հայիս. մատնել զնա 'ի ձեռս քո. քեզ թողեալ է աղքատն. և որբոյն դու ես օգնական։ 15 *Խորտակեսցի բազուկ մեղաւորի՝ և չարի. խնդրեսցին մեղք նորա՝ և մի գտցի։ 16 *Տր թագաւոր յաւիտեանս յաւիտենից. կորիցեն հեթանոսք յերկրէ նորա։ 17 *Զցանկութի տնանկաց լուաւ Տր. 'ի պատրաստութի սրտից նոցա հայեցաւ ունկն քո։ 18 *Դատ առնել որբոյ և տնանկի. զի մի ևս յաւելցի մարդ, 'ի մեծաբանելն իւրում 'ի վերայ երեսաց երկրի։

‖Սաղմ. 13.3. Հռովմ. 3.14.

1 'Ի կատարած. սաղմոս դաւթի։ Ժ։

2 'Ի Տր յուսացայ. ո՞րպ ասիցէք ցանձն իմ. փոփոխեաց 'ի լերինս որպ ճնճղուկ։ 3 *Զի ահա մեղաւորք լարեցին զաղեղունս իւրեանց. պատրաստ արարին զնետս 'ի կապարճս՝ ձգել ընդ խաւար այնոցիկ՝ որ ուղիղ են սրտիւք։ 4 *Զի զոր դու շինեցեր՝ նոքա աւերեցին. 5 իսկ արդարն զի՞ արար։ *‖Տր 'ի տաճար սուրբ իւրում. Տր յերկինս յաթոռ իւրում։ Աչք նր 'ի տնանկս հային՝ արտեւանունքն նր քննեն զորդիս մարդկան։ 6 *Տր քննէ զարդարն և զամբարիշտն. որ սիրէ զմեղս, ատեաց զանձն իւր։ 7 *Տեղասցէ 'ի վերայ մեղաւորաց՝ որոգայթ՝ հուր՝ և ծծումբ. այս մրրիկ բաժին բաժակի նոցա։ 8 *Արդար է Տր՝ և զարդարութի սիրէ. և զուղղութի տեսանեն երեսք նորա։

‖Ամբակ. 2.20.

1 'Ի կատարած. 'ի վերայ ութերորդին։ Սաղմոս Դաւթի։ ԺԱ։

2 Ապրեցո՛ զիս Տր՝ զի նուազեցաւ ար. նուազեցան ճշմարտութիք յորդւոց մարդկան։ 3 *Ի նանիր խօսեցաւ այր ընդ ընկերի իւրում։ շրթամբք նենգաւորօք 'ի սրտէ 'ի սիրտ խօսեցաւ։ 4 *Սատակէ Տր զամ շրթունս նենգաւորս. և զլեզուս մեծաբանս։ 5 *Որք ասացին զլեզուս մեր մեծ արասցուք. շրթունք մեր առ մեզ են. և արդ՝ մեր ո՞վ է Տր։ 6 *Վն տառապանաց աղքատին՝ և հեծութե տնանկին. այժմ յարեայց, ասէ Տր. եդից զփրկութիւն իմ. և համարձակեցայց 'ի նոսա։ 7 *‖Բանք Տն են բանք սբ՝ որպէս զարծաթ. բնտրեալ և փորձեալ յերկրէ. սրբեալ և պարզեալ եօթնպատիկ 'ի հողոյ։ 8 *Դու Տր պահեսցես զմեզ. և ապրեցուսցես զմեզ յազգէ յայսմանէ մինչև յաւիտեան։ 9 *Շուրջանակի ամպարիշտքն շրջին. ըստ բարձրութե քում մեծս արարեր դու զորդիս մարդկան։

‖Առակ. 30.5.

1 'Ի կատարած, Սաղմոս Դաւթի։ ԺԲ։

Մինչև յե՞րբ Տէր՝ մոռանաս զիս իսպառ. մինչև յե՞րբ դարձուցանես 2 զերեսս քո յինէն։ *Մինչև յե՞րբ դնեմ զխորհուրդս յանձն իմ. և ցաւք սրտի 3 իմոյ զաւուրս։ *Մինչև ցե՞րբ բարձրանայ 4 թշնամին 'ի վր իմ։ *Նայեա՛ց և լո՛ւր ինձ Տէր Ած իմ։ Լո՛յս տուր Տր աչաց իմոց. զի մի երբեք ննջեցից 'ի 5 մահ։ *Մի ասասցէ թշնամին. թէ

յաղթեցի նմա. կամ նեղիչք իմ ցնծասցեն, թէ ես սասանեցայց: *Ես յողորմութիւն քո Տր յուսացայ. 6 ցնծասցէ սիրտ իմ 'ի փրկութեն քում. օրհնեցից զՏէր՝ զբարերարդ իմ:

'Ի կատարած Սաղմոս Դաւթի: ԺԳ: 1

Ասաց անզգամն 'ի սրտի իւրում. թէ ոչ գոյ Ա՟ծ: Ապականեցան եւ պղծեցան յանօրէնութեան իւրեանց. եւ ոչ ոք է՝ որ առնէ զբարի: *Տր յերկնից 2 նայեցաւ յորդիս մարդկան. տեսանել թէ իցէ ոք իմաստուն. որ խնդրիցէ զԱ՟ծ: *Ամենեքեան խոտորեցան՝ 3 'ի միասին անպիտանացան: Ոչ ոք է՝ որ առնէ զբարի. եւ ոչ ոք է՝ մինչեւ 'ի մի: ‖Գերեզման բաց է կոկորդ նոցա. լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն. թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց նոցա. որոց բերանք անիծիւք եւ դառնութ. լի են՝ երագք են ոտք նոցա հեղուլ զարիւն. բեկումն եւ թշուառութի 'ի ճանապարհս նոցա. եւ զճանապարհն խաղաղութե ոչ ծանեան. ոչ է երկիւղ Ա՟յ առաջի աչաց նոցա: *Ո՞չ ոչ ծա 4 նիցեն ամենեքեան. որք գործեն զանօրէնութի: Որք ուտեն զժողովուրդ իմ որպ կերակուր հացի: *Եւ առ Տէր 5 ոչ կարդացին: Անդ երկիցեն զերկիւղ՝ ուր ոչ իցէ երկիւղ: *զի Տր է յազգս 6 արդարոց. Զխորհուրդ աղքատին յամօթ արարիք. զի Տէր է յոյս նորա: *Ով տացէ 'ի Սիոնէ զփրկութի Իէլի. 7 'ի դարձուցանել Տն զգերութի ժողովրդեան իւրոյ. ցնծասցէ Յակոբ՝ եւ ուրախ եղիցի Իսրայէլ:

‖ Սղմ. 5.10. Հռոմ. 3.13. Սղմ. 139. 4. Սղմ. 5. 11. Հռոմ. 3.16. Եսայ. 59.7. Առակ. 1.16.

Սաղմոս Դաւթի: ԺԴ: 1

ՏՐ ո՞վ կայցէ 'ի խորանի քում. կամ ո՞վ բնակեսցի 'ի լերան սուրբ քո: *Որ գնայ անբիծ՝ 2 գործէ զարդարութի: *խօսի զճշմար 3 տութի 'ի սրտի իւրում: Որ ոչ նենգաւորեաց լեզուաւ իւրով. եւ չար ընկերի իւրում ոչ արար: Նախատինս 'ի մերձաւորաց ոչ առնու: *արհամար 4 հեալ է առաջի նր չարագործ: Զերկիւղածս Տն փառաւորս առնէ՝ որ երդնու ընկերի իւրում, եւ ոչ ստէ: *Զարծաթ իւր 'ի վաշխ ոչ տայ. 5 եւ կաշառս 'ի վերայ անմեղաց ոչ առնու. որ զայս արասցէ. նա մի սասանեսցի յաւիտեան:

Արձանագիր Դաւթի: ԺԵ: 1

Պահեա զիս Ա՟ծ իմ. զի ես 'ի քեզ յուսացայ: *ասացի Տն. Տէր իմ ես 2 դու. եւ բարեաց իմոց չեն քեզ ինչ պիտոյ:

3 *Սրբոց քոյ՝ որք են յերկրի քում. սքանչելի արարեր զամ կամս իմ 'ի 4 նոսա: *Յաճախեցին հիւանդութիք նց. յետ այսորիկ ապա վաղվաղեցին: Ոչ ժողովեցայց 'ի ժողովս նոցա յարենէ. եւ ոչ յիշեցից զանուանս նոցա 'ի 5 շրթունս իմ: *Տէր բաժին ժառանգութե իմոյ՝ եւ բաժակի իմոյ. դու ես, որ անդրէն դարձուցանես զժա6 ռանգութի իմ յիս: *Վիճակք ելին ինձ ընդ ընտիրս. եւ ժառանգութիւն 7 իմ հաճոյ եղեւ ինձ: *Օրհնեցից զՏր՝ որ իմաստուն արար զիս. մինչ զի 'ի գիշերի եւս խրատեցին զիս երիկամունք 8 իմ: *‖Յառաջագոյն տեսանէի զՏր առաջի իմ յամ ժամ. զի է ընդ աջմէ 9 իմմէ. զի մի սասանեցայց: *Վա այսորիկ ուրախ եղեւ սիրտ իմ. եւ ցնծացաւ լեզու իմ, եւս եւ մարմին իմ բնա10 կեսցի յուսով: *‖Զի ոչ թողցես զանձն իմ 'ի դժոխս. եւ ոչ տացես սրբոյ քում. տեսանել զապականութի: Ցուցցես ինձ զճանապարհս կենաց. լցուսցես զիս ուրախութ երեսաց քոց 'ի քաղցրութե վայելչութե աջոյ քոյ մինչեւ իսպառ:

Հանդ. բերանս

‖ Գործ. 2.25.

‖ Գործ. 2.31. եւ 13. 35.

Աղօթք Դաւթի: ԺԶ: 1

Լուր Տր արդարութե. եւ նայեաց 'ի խնդրուածս իմ. ունկնդիր աղօթից իմոց, զի ոչ շրթամբք նենգաւո2 րօք: *Յերեսաց քոց իրաւունք ինձ ելցեն. եւ աչք իմ տեսցեն զուղղութի: 3 *Փորձեցեր զսիրտ իմ, եւ քննեցեր 'ի գիշերի. փորձեցեր զիս՝ եւ ոչ գտաւ 4 յիս անիրաւութի: *Մի խօսեսցի բերան իմ զգործս որդւոց մարդկան. վա բանից շրթանց քոց ես պահեցից զճա5 նապարհս խիստս: *Հաստատեա զշաւիղս իմ 'ի ճանապարհի քում. զի մի 6 գայթագղեսցին գնացք իմ: *Ես առ քեզ Տր կարդացի՝ զի լուար ինձ Ա՟ծ. խոնարհեցո առ իս զունկն քո. եւ լուր 7 բանից իմոց: *Սքանչելի արարեր զողորմութիս քո՝ ո՛ փրկես զայնոսիկ. 8 որք յուսացեալք են 'ի քեզ: *յայնցանէ, որք հակառակ կան աջոյ քոյ: Պահեա զիս որպ բիբ ական. ընդ հովանեաւ թեւոց քոց ծածկեսցես զիս: 9 *յերեսաց ամբարշտաց. որք տառապեցուցին զիս: Թշնամիք զանձն իմ 10 պաշարեցին: *Եւ 'ի ճարպս իւրեանց արգելին. եւ բերանք նց խօսեցան զամբար11 տաւանութի: *Մերժեցին զիս. եւ այժմ դարձեալ պատեցան զինեւ. ուշ եդին խոնարհեցուցանել զիս յերկիր: 12 *Համարեցան ինձ որպէս առիւծ. զի պատրաստի յորս. եւ որպէս կորիւն առիւ-

ռախտու. զի նստի դարանեալ:
13 *Արի՛ Տր̅ ժամանեա՛ նոցա. եւ խափանեա՛ զնս̅. եւ փրկեա՛ զանձն իմ յամպարշտաց. ՚ի սրոյ: 14 *եւ ՚ի ձեռանէ թշնամւոյն: Տր̅ կորո՛ զնոսա յերկրէ. բաժանեա՛, եւ խափանեա՛ զնս̅ ՚ի կեանս իւրեանց: Դարանեօք քովք լցան որովայնք նց̅. յագեցան կերակրովք. եւ թողին զմնացուածս տղայոց իւրեանց:
15 *Ես արդարութբ̅ երեւեցայց երեսաց քոց. յագեցայց յերեւիլ փառաց քոց:

1 Ի կատարած. ՚ի վերայ պատերազմողն նահատակին՝ ծառայէն Տն̅ Դաւթի. զոր խօսեցաւ ընդ Տն̅ զբանս օրհնութե՝ յաւուր յորում փրկեաց զնա Տր̅ ՚ի ձեռաց ամենայն թշնամեաց, եւ ՚ի ձեռաց Սաւուղայ՝ եւ ասէ: ԺԷ:

2 Սիրեցից զքեզ՝ Տր̅ զօրութի̅ իմ. ‖Տր̅ հաստատիչ իմ՝ ապաւէն իմ՝ եւ փրկիչ իմ: 3 *Ած̅ օգնական իմ, ‖եւ ես յուսամ ՚ի նա՝ ապաւէն իմ. եղջիւր փրկութե իմոյ՝ ընդունօղ իմ է:
4 *Օրհնելով կարդացից առ Տր̅. եւ ՚ի թշնամեաց իմոց ապրեցայց:
5 *Շուրջ եղեն զինեւ երկունք մահու. եւ ուղխք անօրէնութե խռովեցուցին զիս: 6 *Միշտք դժոխոց պաշարեցին զիս. եւ ժամանեցին ինձ որոգայթք մահու: 7 *Ի նեղութեան իմում ես առ Տր̅ կարդացի՝ եւ առ Ած̅ իմ աղաղակեցի: Լուաւ ինձ ՚ի տաճարէ սրբոյ իւրմէ ձայնի աղօթից իմոց. եւ աղաղակ իմ առաջի նր̅, մտցէ յականջս նր̅:
8 *Խռովեցաւ եւ դողաց երկիր՝ եւ հիմունք լերանց սասանեցան՝ եւ խռովեցան. զի բարկացաւ ՚ի վերայ նց̅ Ած̅:
9 *Ել ծուխ ՚ի բարկութե̅ նր̅. եւ հուր յերեսաց նորա բորբոքեցաւ. եւ փայլատակունք հատան ՚ի նմանէ:
10 *Խոնարհեցոյց զերկինս՝ եւ էջ. եւ մէգ ՚ի ներքոյ ոտից նորա: 11 *Ել ՚ի քրովբէս՝ եւ թռեաւ. սլացաւ նա ՚ի թեւս հողմոց:
12 *Եդ զխաւար ՚ի ծածկոյթ իւր. եւ շուրջ զնովաւ էն յարկք իւր. եւ խաւարային ջուրք. մինչեւ յամպս օդոց:
13 *Ի փայլատակել նորա առաջի նորա՝ ամպք անցուցին զկարկուտ եւ զկայծակունս հուր: 14 *Որոտաց Տր̅ յերկնից. եւ բարձրեալն ետ զձայն իւր ՚ի կարկուտ՝ եւ ՚ի կայծակունս հուր:
15 *Առաքեաց զնետս իւր՝ եւ ցրուեաց զնոսա. յաճախեաց զփայլատակունս իւր՝ եւ խռովեցոյց զնոսա: 16 *Երեւեցան աղբիւրք ջուրց. եւ յայտնեցան հիմունք աշխարհի. ՚Ի սաստէ քումմէ Տր̅. եւ ՚ի շնչել հոգւոյ բարկութե քոյ: 17 *Առաքեաց ՚ի բարձանց՝ եւ ընկալաւ զիս. ընկալաւ զիս ՚ի ջուրց բազմաց: 18 *Փրկեսցէ զիս Տր̅ ՚ի թշնամեաց իմոց հզօրաց՝ եւ յատելեաց իմոց. զի հզօրք եղենքան զիս: 19 *Ժամանեցին ինձ յաւուրս չարչարանաց իմոց. եղեւ Տր̅ հզօրիչ իմ: 20 *եւ եհան զիս յանդորր. փրկեաց զիս Տր̅. զի կամեցաւ զիս: 21 *Հատուսցէ ինձ Տր̅ ըստ արդարութե իմում. ըստ ամբծութեան իմում հատուսցէ ինձ: 22 *Ես պահեցից զճանապարհս Տն̅. եւ ոչ ամպարշտեցայց յԱյ̅ իմմէ: 23 *Առ մենայն իրաւունք նր̅. առաջի իմ են. զարդարութի իւր ոչ ՚ի բացէ արար յինէն: 24 *Եղէց եւ ես անբիծ ընդ նմա. եւ զգուշացայց յանօրէնութէ իմմէ: 25 *Հատուսցէ ինձ Տր̅ ըստ արդարութե իմում. ըստ սրբութե ձեռաց իմոց՝ առաջի աչաց իւրոյ: 26 *Ընդ սրբոյն սուրբ եղիցիս. ընդ առն ամբծի ամբիծ եղիցիս: 27 *ընդ ընտրելոյն ընտրեալ եղիցիս. 28 եւ ընդ թիւրոյն թիւրեսցիս: *Դու զժողովուրդս խոնարհս կեցուցանես. եւ զաչս ամբարտաւանից դու խոնարհեցուցանես: 29 *Դու լուսաւոր առնես զճրագ իմ Տր̅՝ Ած̅ իմ՝ լոյս առնես ինձ ՚ի խաւարի: 30 *Ի քեզ փրկեցայց ՚ի փորձութե. աստուծով իմով անցից ընդ պարիսպ: 31 *Ած̅ իմ անբիծք են ճանապարհք նր̅. ‖եւ բանք Տն̅ ընտրեալք են. եւ ապաւէն ամենեցուն. որք յուսան ՚ի նա: 32 *Զի ով է Ած̅ բաց ՚ի Տէ̅. կամ ով է Ած̅. բաց յԱյ̅ մերմէ: 33 *Ած̅ որ զգեցուցեր ինձ զզօրութի. եւ եդեր յամբծութե զճանապարհս իմ: 34 *‖Հաստատեցեր զոտս իմ որպէս եղջերուի. եւ ՚ի վերայ բարձանց կացուցեր զիս: 35 *Ուսուցեր զձեռս իմ ՚ի պատերազմ. եւ արարեր զբազուկ իմ որպէս աղեղն հաստ: 36 *եւ ետուր ինձ զպաշտպանութի փրկութե քոյ: Աջ քո ընկալաւ զիս՝ եւ խրատ քո կանգնեաց զիս իսպառ. եւ խրատ քո ուսուսցէ զիս: 37 *Ընդարձակեցեր զգնացս իմ ՚ի ստորեւ իմմէ. եւ ոչ տկարացան շաւիղք իմ: 38 *Հալածեցից զթշնամիսն իմ, եւ հասից նոցա. եւ ոչ դարձայց ՚ի նոցանէ՝ մինչեւ սպառեցից զնոսա:
39 *Նեղեցից զնոսա. եւ մի՛ կարասցեն կալ. եւ անկցին ՚ի ներքոյ ոտից իմոց: 40 *Զգեցուցեր ինձ զզօրութի ՚ի պատերազմի. եւ զյարուցեալսն ՚ի վր̅ իմ, 41 ՚ի ներքոյ իմ արարեր: *Զթշնամիսն իմ հալածականս արարեր. եւ զատելիսն իմ սատակեցեր: 42 *Աղաղակեցին. եւ ոչ ոք էր՝ որ փրկէր զնոսա. կարդացին առ Տէր. եւ ոչ լուաւ նոցա: 43 *Մանրեցից զնս̅ որպէս փոշի առաջի հողմոյ. եւ ոպ̅ կաւ դռնհաց կոխեցից զնոսա:

‖2 Թագ 22.2. ‖Եբր 2.13. ‖Առակ 30.5. ‖2 Թագ 22.34.

ծրեաց; պահեցի; ամբարշտեցայ; եղէ; զգուշացայ; լոյս արա

զնոսա: * Փրկեսցէ զիս Տր 'ի հակառակութենէ ժողովրդոց. և կացուսցէ զիս գլուխ հեթանոսաց: * Ժողովուրդ զոր ոչ գիտէի, ծառայեաց ինձ. և 'ի լուր ականջաց լուաւ ինձ: * Որդիք օտարաց ստեցին ինձ. որդիք օտարաց մաշեցան. և կաղացան 'ի շաւղաց իւրեանց: * Կենդանի է Տր՝ և օրհնեալ է Ած. և բարձր եղիցի Ած փրկութեան իմոյ: * Ած է՝ որ խնդրէ զվրէժ իմ. և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինև: Փրկիչ իմ 'ի թշնամեաց իմոց բարկացողաց: * յայնցանէ՝ որք յարուցեալք են 'ի վերայ իմ. բարձր արարեր զիս՝ և յառնէ անիրաւէ փրկեցեր զիս: * Վս այսորիկ խոստովան եղէց քեզ 'ի հեթանոսս. և անուան քում սաղմոս ասացից: * Մեծ արարեր զփրկութիւն թագաւորի նր. առնել ողորմութիւն ընդ օծելոյ նորա դաւթի. և ընդ զաւակի նորա յաւիտեան մինչև յաւիտ:

Բ Թագ. 22.50: Հռովմ. 15.9

Ի նուագարանս. Սաղմոս Դաւթի: ԺԸ:

ԵՐԿԻՆՔ ՊԱՏՄԵՆ զփառս Այ. և զարարածս ձեռաց նորա պատմէ հաստատութիւն: * Օր աւուր բղխէ զբան. և գիշեր գիշերոյ ցուցանէ զգիտութիւն: * Ոչ են բանք՝ և ոչ են խօսք՝ որոց ոչ լսին ձայնք նոցա: * Ընդ ամ երկիր ել բարբառ նց. և մինչև 'ի ծագս աշխարհի են խօսք նոցա: * Յարևու եհար զխորան իւր. և ինքն որպէս փեսայ՝ զի ելանէ յառագաստէ իւրմէ. և ցնծայ նա որպէս սկայ յընթանալ 'ի ճանապարհս իւր: * 'Ի ծագաց երկնից են ելք նր. հանգիստ նր մինչև 'ի ծագս նորուն. և ոչ ոք իցէ որ թաքիցէ 'ի տապոյ նորա: * Օրէնք Տն անբիծք են՝ և դարձուցանեն զհոգիս. վկայութիւն Տն հաւատարիմ է. և իմաստուն առնէ զտղայս: * Արդարութիւնք Տեառն ուղիղք են, և ուրախ առնեն զսիրտս. պատուիրանք Տն լոյսք են՝ և լոյս տան աչաց. երկիւղ Տն սուրբ է. և մնայ յաւիտեան: * Դատաստան Տն ճշմարիտ է. և արդար է 'ի նոյն: * Ցանկալի է նա քան զոսկի՝ և քան զականս պատուականս բազումս. քաղցր է նա քան զմեղր խորիսխ: * Ծառայ քո պահեսցէ զայս. 'ի պահել նր հատուցումն բազում: * Զյանցուածս իւր ո՞վ կարէ առնուլ 'ի միտ. 'ի գաղտնեաց իմոց սուրբ արա զիս Տր:

Հռովմ. 10. 18. Ղուկ. 24. 46.

* և յօտարէն պահեա զծառայս քո. Ապա թէ ոչ տիրեսցեն ինձ. յայնժամ անբիծ եղէց՝ և սուրբ եղէց 'ի մեղաց մեծաց: * Եղիցին քեզ հաճոյք բանք բերանոյ իմոյ. խորհուրդք սրտի իմոյ առաջի քո յամենայն ժամ. Տէր օգնական իմ, և փրկիչ իմ:

Ի նուագարանս Սաղմոս Դաւթի: ԺԹ:

Լուիցէ քեզ Տէր յաւուր անձկութեան. օգնական եղիցի քեզ անուն Այ յակոբայ: * Առաքեսցէ քեզ Տէր զօգնութիւն 'ի սրբութենէ իւրմէ. և 'ի սիոնէ ընկալցի զքեզ: * * Յիշեսցէ Տր զամ պատարագս քո. և զողջակէզս քո ընդունելի արասցէ: * Տացէ քեզ Տր ըստ սրտի քում. զամ խորհուրդս քո նա կատարեսցէ: * Ցնծասցուք մեք 'ի փրկութեան քում. յանուն Այ մերոյ մեք մեծք եղիցուք: * Լցուսցէ Տր զամ խնդրուածս քո. այժմ ծանեաք. զի կեցոյց Տր զօծեալ իւր. Լուաւ սմա յերկնից 'ի սրբութենէ իւրմէ՝ 'ի զօրութիւն փրկութեան աջոյ իւրոյ: * Սոքա կառօք՝ և սոքա երիվարօք՝ այլ մեք զանուն Տն Այ մերոյ կարդասցուք: * Սոքա խափանեցան՝ և անկան. մեք յարեաք՝ և ուղիղք եղեաք: * Տր կեցո զթագաւորն՝ և լուր մեզ. յաւուր յորում կարդասցուք առ քեզ:

Ի նուագարանս Սաղմոս Դաւթի: Ի:

ՏՐ 'ի զօրութեան քում ուրախ եղիցի թագաւորն. 'ի փրկութեան քում ցնծասցէ յոյժ: * Զցանկութիւն սրտի նր ետուր նմա. և զկամս շրթանց նր ոչ արգելեր 'ի նմանէ: * Ժամանեցեր զնա յօրհնութիւն քաղցրութեան քո. և եդեր 'ի գլուխ նորա պսակ 'ի քարէ պատուականէ: * Կեանս խնդրեաց 'ի քէն. և ետուր նմա ընդ երկայն աւուրս՝ յաւիտեանս յաւիտենից: * Մեծ են փառք նորա 'ի փրկութեան քում. զփառս և զմեծ վայելչութիւն դիցես 'ի վերայ նորա: * Տացես զնա յօրհնութիւն յաւիտեանս յաւիտենից. և ուրախ արասցես զնա յուրախութեան երեսաց քոց: * Թագաւոր յուսացաւ 'ի Տր՝ յողորմութենէ բարձրելոյն նա մի սասանեսցի: * Գտցի ձեռն քո 'ի վերայ թշնամեաց քոց. և աջ քո գտցէ զամ ատելիս քո: * Դիցես զնոսա որպէս հնոց հրոյ. 'ի ժամանակի երեսաց քոց: Տր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնոսա. և հուր կերիցէ զնոսա: * Զպտուղ նոցա յերկրէ կորուսցէ. և զզաւակ նոցա յորդւոց մարդկան: * Խորհեցան 'ի քէն չարութիւն. և

և խորհեցան զխորհուրդ․ զոր ոչ կարասցեն հաստատել ։ 13 *Արասցես զնոսա հալածեալս․ 'ի մնացուածս քո պատրաստեսցես զերեսս նոցա ։ 14 *Բարձր լեր Տր 'ի զօրութեան քում․ օրհնեսցուք, և սաղմոս ասասցուք զօրութեանց քոց ։

1 'Ի կատարած․ վն աստուածային օգնականութեան ։

Սաղմոս Դաւթի ։ ԻԱ ։

Մատթ. 27. 46. Մարկ. 15. 34.

2 ԱԾ Ած իմ, նայեաց առ իս․ ընդէ՞ր թողեր զիս․ հեռի եղէ 'ի փրկութէ իմմէ վն բանից յանցանաց իմոց ։ 3 *Ած իմ, 'ի տուէ կարդացի առ քեզ՝ և ինձ ոչ լուար․ 'ի գիշերի, և ինձ ոչ անսացեր ։ 4 *Դու 'ի սուրբս բնակեալ ես․ գովեալդ Իսրայելի ։ 5 *Ի քեզ յուսացան հարքն մեր ։ յուսացան 'ի քեզ․ և փրկեցեր զնոսա ։ 6 *Առ քեզ աղաղակեցին, և կեցին․ 'ի քեզ յուսացան, և ոչ ամաչեցին ։ 7 *Այլ ես որդն եմ․ և ոչ եմ մարդ․ նախատինք մարդկան՝ և արհամարհանք ժողովրդոց ։

Մատթ. 27. 39. Մարկ. 15. 29.

8 *Ամենեքեան որք տեսանէին զիս՝ արհամարհէին զինև․ խօսէին շրթամբք՝ և շարժէին զգլուխս իւրեանց ։ 9 *Յուսացաւ 'ի Տր՝ և փրկեսցէ զնա․ կեցուսցէ զնա՝ զի կամի զնա ։

Մատթ. 27. 43.

10 *Դու ես՝ որ հաներ զիս յարգանդէ․ յոյս իմ 'ի ստեանց մօր իմոյ ։ 11 *Ի քեզ անկեալ եմ յարգանդէ․ յորովայնէ մօր իմոյ դու ես Ած իմ ։ 12 *Մի 'ի բացեայ առներ յինէն՝ զի նեղութիւնք մերձեալ են․ և ոչ ոք է՝ որ օգնէ ինձ ։ 13 *Շուրջ եղեն զինև զուարակք բազումք՝ և ցուլք գէրք պաշարեցին զիս ։ 14 *Բացին 'ի վր իմ զբերանս իւրեանց որպէս առիւծ․ զի մռնչէ՝ և յափշտակէ ։ 15 *Իբրև զջուր հեղայ՝ և ցրուեցան ամենայն ոսկերք իմ․ և եղև սիրտ իմ իբրև մոմ հալեալ 'ի մէջ որովայնի իմոյ ։ 16 *Չորացաւ որպէս խեցի զօրութիւն իմ, լեզու իմ 'ի քիմս իմ կցեցաւ․ և 'ի հող մահու իջուցին զիս ։ 17 *Շուրջ եղեն զինև շունք բազումք․ և ժողովք չարաց պաշարեցին զիս ։ Ծակեցին զձեռս իմ, և զոտս իմ ։ 18 *և թուեցին զամենայն ոսկերս իմ․ նոքա հայեցան, և տեսին զիս ։

Մատթ. 27. 35. Յովհ. 19. 23. 24.

19 *Բաժանեցին զհանդերձս իմ 'ի մէջ իւրեանց․ և 'ի վր պատմուճանի իմոյ վիճակս արկանէին ։ 20 *Դու Տր մի՛ հեռի առներ զգթութիւն քո յինէն․ և Տր յօգնել ինձ նայեաց ։ 21 *Փրկեա՛ 'ի սրոյ զանձն իմ․ և 'ի ձեռաց շանց՝ զմիամօրութիւն իմ ։ 22 *Փրկեա՛ զիս 'ի բերանոյ առիւծու, յեղջերէ միեղջերուոյ զխոնարհութիւն իմ ։

Եբրայ. 2. 12.

23 *Պատմեցից զանուն քո եղբարց իմոց․ 'ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ ։ 24 *Երկիւղածք Տեառն օրհնեսցեն զնա․ ամենայն զաւակքն յակոբեան փառաւոր արասցեն զնա ։

(օրհնեցէք․ զնա․)

25 *Երկիցէ 'ի Տէ ամ զաւակն Իէլ՝ զի ոչ արհամարհեաց, և ոչ անարգեաց զաղօթս աղքատի․ և ոչ դարձոյց զերեսս իւր յինէն․ այլ 'ի կարդալ իմում առ նա լուաւ ինձ ։ 26 *Ի քէն է գովութիւն իմ․ յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ ։ Զուխտս իմ կատարեցից առաջի ամենայն երկիւղածաց նորա ։ 27 *Կերիցեն տնանկք, և յագեսցին․ օրհնեսցեն զՏէր՝ որք խնդրեն զնա ։ Կեցցեն սիրտք նոցա յաւիտեանս յաւիտենից ։ 28 *Յիշեսցեն, և դարձցին առ Տէր՝ ամ ծագք երկրի ։ Երկիրպագցեն նմա ամ տոհմք ազանց ։ 29 * զի Տն է արքայութի․ և նա տիրէ 'ի վերայ ամենայն հեթանոսաց ։ 30 *Կերին, և երկիր պագին նմա ամենայն պարարտք երկրի․ առաջի նորա անկցին ամենեքեան՝ որք իջանեն 'ի հող ։ 31 *Անձն իմ նմա կեայ․ և զաւակ իմ ծառայեսցէ նմա ։ 32 *Պատմեսցի Տն ազգ՝ որ գալոց իցէ․ պատմեսցեն զարդարութիւն նորա ժողովրդեան․ որ ծնանելոցն է՝ զոր արար Տէր ։

1 Սաղմոս Դաւթի ։ ԻԲ ։

Եսայ. 40. 11. Երեմ. 23. 4. Եզեկ. 34. 11. 23. 1. Պետր. 2. 25 ։ և 5. 3.

ՏՐ հովուեսցէ զիս․ և ինձ ինչ ոչ պակասեսցի ։ 2 *Ի վայրի դալարոջ անդ բնակեցոյց զիս․ և առ ջուրս հանգստեան սնոյց զիս ։ 3 *Դարձոյց զանձն իմ առ իս․ առաջնորդեաց ինձ 'ի ճանապարհս արդարութեան վասն անուան իւրոյ ։ 4 *Թէպէտ և գնացից ես 'ի մէջ ստուերաց մահու․ ոչ երկեայց 'ի չարէ․ զի դու Տր ընդ իս ես ։ Ցուպ քո և գաւազան․ նոքա մխիթարեսցեն զիս ։ 5 *Պատրաստ արարեր առաջի իմ սեղան․ ակնյանդիման նեղչաց իմոց․ Օծեր իւղով զգլուխ իմ․ բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս ։ 6 *Ողորմութի քո Տր զհետ իմ եկեսցէ զամ աւուրս կենաց իմոց․ բնակել ինձ 'ի տան Տն ընդ երկայն աւուրս ։

1 Սաղմոս միաշաբաթւոյ Դաւթի ։ ԻԳ ։

Ելից. 19. 5. 1. Կորն. 10. 26. Սաղմ. 49. 12.

ՏՆ է երկիր լրիւ իւրով․ աշխարհ և ամ բնակիչք նր ։ 2 *Նա ինքն 'ի վր ծովու հիմնեաց զնա․ 'ի վր գետոց պատրաստեաց զնա ։ 3 *Ո՛վ ելցէ 'ի լեառն Տն․ կամ ո՛վ կացցէ 'ի տեղւոջ սրբութեան նր ։ 4 *Որ սուրբ է ձեռօք՝ և ամբիծ սրտիւ․ որ ոչ էառ զնանրութի յանձն իւր՝ և ոչ երդուաւ նենգութե ընկերի իւրում ։ 5 *Սա առցէ զօրհնութի 'ի Տէ․ ողորմութի յԱծոյ փրկչէ իւրմէ ։ 6 *Այս ազգ է՝ որ խնդրէ զՏր․

խնդրէ

խնդրէ տեսանել զերեսս Այ Յակոբայ:
7 *Համբարձէ՛ք իշխանք զդրունս ձեր
'ի վեր. համբարձցին դրունք յաւիտե
նից՝ և մտցէ թագաւոր փառաց:
8 *Ո՛վ է սա թագաւոր փառաց. Տր հզօր
զօրութբ իւրով. Տր հզօր 'ի պատերազ
9 մի: * Համբարձէ՛ք իշխանք զդրունս
ձեր 'ի վեր. համբարձցին դրունք յաւի
տենից՝ և մտցէ թագաւոր փառաց:
10 *Ո՛վ է սա թագաւոր փառաց. Տր զօ_
րութեց սա ինքն է թագաւոր փառաց:

1 Սաղմոս Դաւթի: ԻԴ:

Առ քեզ Տր համբարձի զանձն իմ:
2 *Ած իմ 'ի քեզ յուսացայ. մի՛ ա_
մաչեցից: 3 * և մի՛ ծիծաղեսցին զինև
թշնամիք իմ: Ամենեքեան՝ որք համ_
բերեն քեզ՝ մի՛ ամաչեսցեն. 4 * այլ ա_
մաչեսցեն անօրէնք յունայնութե իւր
եանց: Զճանապարհս քո Տէր ցոյց
ինձ. և զշաւիղս քո ուսո՛ ինձ:
5 *Առաջնորդեա՛ ինձ 'ի ճշմարտութե
քում. և ուսո՛ զիս. զի դու ես Ած փրկ_
կիչ իմ. և ես քեզ համբերեմ զօրհանա
պազ: 6 * Յիշեա՛ Տր զգթութիս քո. և
զողորմութիս քո՝ որք են յաւիտենից:
7 * Զմեղս մանկութե իմոյ՝ և զանգի_
տութե իմոյ մի՛ յիշեր. այլ յիշեա՛ զիս
Տր ըստ ողորմութե քում. վասն քաղ
8 ցրութե քոյ Տէր: * զի քաղցր և ու_
ղիղ ես: Վասն այսորիկ օրէնսդէտ առ
նէ զմեղաւորս 'ի ճանապարհի:
9 *Առաջնորդես հեզոց 'ի դատաստա_
նի. ուսուցանես հեզոց զճանապարհս
10 քո: * Ամ ճանապարհք Տն ողորմու
թբ և ճշմարտութբ են այնոցիկ՝ որք
խնդրեն զուխտ և զվկայութի նորա:
11 *Վասն անուան քոյ Տր քաւեա՛ զմեղս
12 իմ. զի բազում են: * ո՛վ է մարդ
որ երկնչի 'ի Տէ. օրէնսդէտ առնէ
զնա 'ի ճանապարհի՝ յոր հաճեցաւ:
13 *Անձն նր 'ի բարութե հանգիցէ. և
զաւակ նր ժառանգեսցէ զերկիր:
14 * Զօրութի է Տր երկիւղածաց իւրոց.
և զկտակարանս իւր ուսուցանէ նց:
15 *Աչք իմ յամ ժամ առ Տր են. և նա
հանէ յորոգայթէ զոտս իմ:
16 *Նայեա՛ց առ իս՝ և ողորմեա՛ց ինձ. զի
միամօր՝ և աղքատ եմ ես:
17 *Նեղութիք սրտի իմոյ բազումք եղեն
յոյժ. և 'ի վշտաց իմոց հա՛ն զիս:
18 *Տե՛ս զխոնարհութի իմ՝ և զվաս_
տակ իմ. և թո՛ղ ինձ զամ զմեղս իմ:
19 *Տե՛ս զթշնամիս իմ, զի բազում եղեն
ատելութբ՝ զոր ատեցին զիս:
20 *Պահեա՛ զանձն իմ, և փրկեա՛ զիս. և
մի՛ յամօթ եղէց՝ զի յուսացայ 'ի քեզ:
21 *Անմեղք՝ և ուղիղք կցորդք եղեն ինձ.
22 և ես քեզ համբերի: * փրկեա՛ Ած
զիէլ յամ նեղութեց նր:

1 Սաղմոս Դաւթի: ԻԵ:

Դատ արա ինձ Տր՝ զի ես յամբծու_
թե իմում գնացի. 'ի Տր յուսա_
2 ցայ. զի մի՛ եղէց հիւանդ: * Փորձեա՛
զիս Տր՝ և քննեա՛ զիս. փորձեա՛ զե_
րիկամունս իմ և զսիրտ իմ:
3 *Ողորմութի քո առաջի աչաց իմոց.
և հաճոյ եղէց ճշմարտութե քում:
4 *Ո՛չ նստայց ես յաթոռս նանրաց. և
5 ընդ անօրէնս եւ ո՛չ մտից: *Ատեցի
ես զժողովս չարաց. և ընդ ամպա_
6 րիշտս ես ո՛չ նստայց: *Լուացից սր_
բութբ զձեռս իմ. և շուրջ եղէց զսե
7 ղանով քով Տր: *Լսել ինձ զձայն օրհ
նութե քոյ. պատմել զամ սքանչելիս
8 քո: *Տր սիրեցի զվայելչութի տան
քոյ և զտեղի յարկի փառաց քոց:
9 * Մի՛ կորուսաներ ընդ ամպարիշտս
զանձն իմ. և մի՛ ընդ արս արիւնահեղս
10 զկեանս իմ: * Որոց ձեռք յանօրէ_
նութե են. և աջն նց լի՛ է կաշառօք:
11 * Ես յամբծութե իմում գնացի.
փրկեա՛ զիս Տր՝ և ողորմեա՛ց ինձ:
12 * Ոտն իմ կացցէ յուղղութե. յեկե_
ղեցիս մեծս օրհնեցից զքեզ:

1 Սաղմոս Դաւթի մինչչև օծեալ էր:
ԻԶ:

Տր լոյս իմ. և կեանք իմ. ես յումմէ՞
երկեայց. Տր ապաւէն կենաց
2 իմոց՝ ես յումմէ՞ դողացայց: *'Ի մեր_
ձենալ առ իս չարաց ուտել զմարմինս
իմ. նեղիչք իմ, և թշնամիք իմ. նոքա
3 տկարացան, և անկան: * Թէ պատ
րաստեսցի 'ի վերայ իմ պատերազմ, ո՛չ
երկիցէ սիրտ իմ. թէ յարիցէ 'ի վր
իմ ճակատամարտ՝ սակայն և յայսմիկ
4 'ի քեզ Տր յուսացայ: * Զմի խնդրեցի
'ի Տէ՝ և զայն աղաչեմ. բնակել ինձ
'ի տան Տն զամ աւուրս կենաց իմոց:
Տեսանել ինձ զվայելչութի Տն և հրա
մանս տալ 'ի տաճարի նորա:
5 * Ծածկեաց զիս 'ի խորանի իւրում
յաւուր չարի. ընդ յարկաւ արար
զիս 'ի ծածկոյթ խորանի իւրոյ:
6 * 'Ի վիմի բարձր արարեր զիս: և
այժմ բարձր արա զգլուխ իմ 'ի վերայ
թշնամեաց իմոց: Շուրջ եղէց՝ մատու
ցից 'ի խորանի նորա պատարագս օրհ
նութե. օրհնեցից՝ և սաղմոս ասացից
7 Տն: *Լո՛ւր Տր ձայնի իմում. զի կար
դացի առ քեզ. ողորմեա՛ց ինձ և լո՛ւր
8 ինձ: * զի քեզ ասաց սիրտ իմ. և խնդ
րեցին երեսք իմ, զերեսս քո Տր խնդ_
9 րեցից: * Մի՛ դարձուցաներ զերեսս
քո

քո յինէն. և մի խոտորիր բարկութբ 'ի ծառայէ քումմէ : Օգնական իմ լէր Տր՝ մի անարգեր զիս. և մի թողուր զիս՝ Ած փրկիչ իմ: * Հայր իմ և մայր իմ թողին զիս. և Տէր ընկալաւ զիս : * Օրէնսդիր արա զիս Տր 'ի ճանապարհի քում. առաջնորդեա ինձ 'ի շաւիղս քո ուղիղս : * Մի թշնամեաց իմոց: մի մատներ զիս 'ի ձեռս նեղչաց իմոց : Յարեան 'ի վր իմ վկայք մեղաց. և ստեցին ինձ յանօրէնութե իւրեանց. * Հաւատացի տեսանել զբարութիւն Տն յերկրին կենդանեաց : * Համբերէ Տն և քաջալերեա՛ց՝ զօրասցի սիրտ քո՝ և համբերէ Տն:

## Սաղմոս Դաւթի: ԻԷ:

Առ քեզ Տր կարդացի՝ Ած իմ, մի լռեր յինէն. մի երբեք լռիցես յինէն. նմանիցիմ այնոցիկ՝ որք իջանեն 'ի գուբ : * Լուր Տր ձայնի խնդրուածոց իմոց յաղաչել ինձ առ քեզ. 'ի համբառնալ ձեռաց իմոց 'ի տաճար սբ քո: * Մի համարիր ընդ ամպարշտս զանձն իմ. և մի ընդ այնոսիկ՝ որք գործեն զանօրէնութիւն՝ կորուսաներ զիս : Որք խօսին զխաղաղութի ընդ ընկերս իւրեանց. և չարութի է 'ի սիրտս նց: * Տուր նց ըստ գործոց նոցա. ըստ անօրէնութե գնացից նց հատո՛ նոցա: Ըստ գործոց ձեռաց նց հատո՛ նց. զհատուցումն նոցա նոցին : * Մի իմացան նոքա զգործս Տն. և ոչ 'ի գործս ձեռաց նորա հայեցան. կործանեսցես զնս՝ և այլ մի շինեսցիս : * Օրհնեալ է Տէր՝ զի լուաւ ձայնի աղօթից իմոց: * Տր օգնական իմ, և պաշտպան իմ: 'Ի նա յուսացաւ սիրտ իմ. օգնեցաւ՝ և զուարճացաւ մարմին իմ. և ես կամօք իմովք խոստովան եղէց նմա: * Տր զօրութի ժողովրդեան իւրոյ. ապաւէն փրկութե օծելոյ իւրոյ : * Փրկեա զժողովուրդ քո՝ և օրհնեա զժառանգութիւն քո. հովուեա և բարձրացո զնոսա մինչև յաւիտեան:

## Սաղմոս Դաւթի: ԻԸ:

Մատուցէք Տն որդիք Այ. մատուցէք Տն զորդիս խոյոց: * Մատուցէք Տն զփառս և զպատիւ. մատուցէք Տն զփառս անուան նորա. և երկիր պագէք Տն 'ի սրահ սրբութե նորա: * Ձայն Տն 'ի վերայ ջուրց՝ և Ած փառաց որոտաց. և Տր ինքն 'ի վր ջուրց բազմաց: * Ձայն Տն զօրութբ. ձայն Տն մեծ վայելչութբ: * Ձայն Տն փշրէ զմայրս. և մանրէ Տր զմայրս լիբանա

նու: * Մանրեսցէ զնս որպէս զմատաղատունկն լիբանանու. որ սիրելին է որպէս որդիս միեղջերուի: * Ձայն Տն հատանէ զբոց հրոյ: * Ձայն Տն շարժէ զանապատն. և խռովեցուցանէ Տր զանապատն կադէս: * Ձայն Տն հաստատէ զեղջերուս. և յայտնի առնէ զանտառս: 'Ի տաճարի նորա ամենեքեան ասասցեն զփառս նմա: * Տէր զջրհեղեղս նստուցանէ, և ցածուցանէ. թագաւորեսցէ Տէր յաւիտեան : * Տէր զզօրութիւն ժողովրդեան իւրոյ տացէ. Տէր օրհնեսցէ զժողովուրդս իւր 'ի խաղաղութեան:

## Սաղմոս օրհնութե նաւակատեաց տաճարին Դաւթի: ԻԹ:

Բարձր առնեմ զքեզ Տր՝ զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս: * Տէր Ած իմ կարդացի առ քեզ՝ և բժշկեցեր զիս: * Տր հաներ 'ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ՝ որք իջանեն 'ի գուբ: * Սաղմոս ասացէք Տն սբք նր. խոստովան եղերուք յիշատակի սրբութե նր: * Սրտմտութի է 'ի բարկութե նր. և կեանք են 'ի կամաց նր: Ընդ երեկոյս հանգիցեն լալիք. առաւօտուց ելիցէ ուրախութի : * Ես ասացի 'ի բարեկենդանութե իմում. թէ ոչ սասանեցայց յաւիտեան: * Տէր 'ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զզօրութի. դարձուցեր զերեսս քո յինէն՝ և ես եղէ խռովեալ: * Առ քեզ Տէր կարդացի՝ առ Ած իմ աղաղակեցի: * Զինչ օգուտ է քեզ յարենէ իմմէ՝ թէ իջանեմ ես յապականութի : Միթէ հող խոստովան առնիցի առ քեզ. կամ պատմեսցէ զճշմարտութիս քո : * Լուաւ ինձ Տէր՝ և ողորմեցաւ. և Տէր եղև իմ օգնական: * Դարձոյց զսուգ իմ յուրախութի. եհերծ յինէն զքուրձ. և ինձ զգեցոյց զուրախութի: * Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ. և մի զղջացայց. Տէր Ած իմ՝ յաւիտեան խոստովան եղէց քեզ:

## 'Ի կատարած Սաղմոս Դաւթի: օրհնութե նահատակութե: Լ:

'Ի քեզ Տր յուսացայ՝ մի ամաչեցից յաւիտեան. յարդարութե քում փրկեա զիս՝ և ապրեցո զիս: * Խոնարհեցո առ իս զունկն քո. վաղվաղեա 'ի կեցուցանել զիս : Լեր իմ Ած պաշտպան. և տուն ապաւինի ապրեցուցանել զիս : * Զի հզօրիչ իմ, և ապաւէն իմ դու ես: Վասն անուան քոյ առաջնորդեսցես

ինձ՝ և սնուցես զիս։ *և հանցես զիս 5 յորոգայթէ յայսմանէ՝ զոր թաքուցին ինձ։ Դու ես պաշտպան իմ Տր։ *‖և 6 'ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։ Փրկեցեր զիս Տր Ած ճշմարտութեան։ *ատեցեր զայնոսիկ՝ որք պահեն զեր 7 կեւղ սնոտի։ Ես 'ի Տր յուսացայ։ *ցնծացայց՝ և ուրախ եղէց 'ի փրկու- 8 թեան քում։ Զի հայեցար 'ի խոնարհու-թիւն իմ. և փրկեցեր 'ի վշտաց զանձն իմ։ *և ոչ մատնեցեր զիս 'ի ձեռս նեղչաց 9 իմոց. և կացուցեր յանդորրու զոտս իմ։ *Ողորմեա ինձ Տր. զի նեղեալ եմ ես. 10 խռովեցաւ 'ի սրտմտութենէ ակն իմ՝ անձն իմ և փոր իմ։ *Պակասեցան 'ի 11 ցաւոց կեանք իմ. և ամք իմ յոգւոց ելանելոյ։ Աղքատացաւ 'ի տկարութենէ զօրութիւն իմ. և ոսկերք իմ խռովե-ցան։ *Քան զամ թշնամիս իմ եղէ 12 ես նախատ դրացեաց իմոց. յոյժ ահ՝ և երկիւղ ծանօթից իմոց։ Ամենե-քեան՝ որք տեսանէին զիս. արտաքս փախչէին յինէն։ *Մոռացեալ եղէ 13 ոնց մեռեալ 'ի սրտէ. և եղէ ես որպէս զանօթ կորուսեալ։ *Զի լուայ ես 14 զբամբասանս բազմաց՝ որք շուրջ էին զինև. ժողովել նոցա 'ի միասին առնուլ զանձն իմ խորհեցան։ *այլ ես 'ի քեզ 15 Տր յուսացայ։ Ասացի՝ դու ես Ած իմ։ *և 'ի ձեռս քո է ժառանգութիւն իմ։ 16 Փրկեա զիս 'ի ձեռաց թշնամեաց իմոց. և 'ի հալածչաց իմոց։ *Երևեցո զերեսս 17 քո 'ի ծառայս քո. ապրեցո զիս Տր ըստ ողորմութեան քում։ *Տր մի՛ յամօթ ե- 18 ղէց. զի կարդացի առ քեզ։ Ամաչես-ցեն ամպարիշտք՝ և իջցեն 'ի դժոխս։ *համր եղիցին շրթունք նենգաւորք՝ 19 որք խօսին զարդարոյ զանիրաւութիւն. յամբարտաւանութեան և յանարգանել իւրեանց։ *Որպէս զի բազում արա- 20 րեր զողորմութիւն քաղցրութեան քո Տր. զոր պահեցեր երկիւղածաց քոց։ Արա-րեր դու այնոցիկ՝ որք յուսացեալ են 'ի քեզ. առաջի որդւոց մարդկան։ *Ամրացուսցես զնս 'ի ծածկոյթ երե- 21 սաց քոց. 'ի խռովութենէ մարդկան։ Ծածկեսցես զնոսա 'ի խորանի քում, 'ի հակառակութենէ լեզուաց։ *Օրհ- 22 նեալ է Տր՝ զի սքանչելիս արար զո-ղորմութիւն իւր 'ի քաղաքի ամուր։ *Ես ասացի 'ի զարմանալ իմում. թէ 23 ընկեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց։ Վասն այսորիկ լուար ձայնի աղօթից իմոց. յաղաղակել ինձ առ քեզ։ *Սիրեցէք զՏր ամ սուրբք նր. զի զճշմա- 24 րտութիւն խնդրէ Տր. և հատուցանէ այ-նոցիկ՝ որք առաւել առնեն զամբար-տաւանութիւն։ *Քաջալերեցարուք՝ 25

‖Ղուկ. 23. 46.

և զօրասցին սիրտք ձեր. ամենեքեան որք յուսացեալ էք 'ի Տր։

1 Իմաստութիւն Սաղմոս Դաւթի։ ԼԱ։

Երանի‖ում թողութիւն եղև մեղաց. և ծածկեցան ամ յանցանք նր։ 2 *Երանի առն՝ որում ոչ համարի Տր զմեղս նորա. և ոչ գոյ նենգութիւն 'ի 3 բերան նր։ *Լռեցի ես՝ և մաշեցան ամ ոսկերք իմ. ամ աղաղակել ինձ առ 4 Տր զօրհանապազ։ *'ի տուէ և 'ի գի-շերի։ Ծանրացաւ ձեռն քո 'ի վր իմ. դարձայ 'ի թշուառութիւն իմ. զի հարան 5 յիս փուշք։ *Զմեղս իմ ցուցի քեզ. և զանօրէնութիւնս իմ ոչ ծածկեցի 'ի քէն։ ‖Ասացի թէ պատմեցից յինէն զմեղս իմ. և դու թողցես զամ ամ-6 պարշտութիւնս մեղաց իմոց։ *Վասն այսորիկ յաղօթս կացցեն առ քեզ ամ սուրբք՝ 'ի ժամ ընդունելի։ Բայց միայն 'ի ջուրսն հեղեղաց բազմաց. որք առ նոսա ինչ ոչ մերձենան։ 7 *Դու ես ապաւէն իմ 'ի նեղութենէ յայսմանէ. որ շուրջ եղև զինև։ Ցնծութիւն իմ, փրկեա զիս յայնցանէ. 8 որք պաշարեցին զիս։ *Իմաստուն արա-րից զքեզ՝ և խելամուտ 'ի ճանապար-հի՝ յոր գնասցես. և հաստատեցից 'ի 9 վերայ քո զաչս իմ։ *Մի՛ լինիք որպէս զձի՝ և զջորի. զի ոչ գոյ 'ի նս իմաս-տութի. 'ի սանձս՝ և 'ի դանդանաւանդս ճմլեսցես զկզակս նց, որք քեզ ինչ 10 ոչ մերձեսցին։ *Բազում են տանջանք մեղաւորաց. բայց որք յուսան 'ի Տր՝ ողորմութիւն Տն շուրջ եղիցի զնո-11 քօք։ *Ուրախ լերուք՝ և ցնծացէք ար-դարք՝ 'ի Տէր պարծեցարուք ամենե-քեան՝ որք ուղիղք էք սրտիւք։

‖Հռով. 4. 7.

‖Ես. 65. 24.

Անվերնագիր 'ի հեբրայեցւոց։ ԼԲ։

1 Ցնծացէք արդարք 'ի Տր. ուղղոց 2 վայելէ օրհնութի։ *Խոստո-վանս եղերուք Տն օրհնութբ. տասնա-ղեաւ սաղմոսարանաւ սաղմոս ասա-3 ցէք նմա։ *Օրհնեցէք զՏր յօրհնու-թի նոր՝ բարի սաղմոս ասացէք նմա 4 օրհնութբ։ *Ուղիղք են պատգամք Տն. և ամ գործք նր հաւատովք են։ 5 *և սիրէ զողորմութիւն և զիրաւունս Տր։ Ողորմութբ Տն լի եղև երկիր։ 6 *‖և բանիւ Տն երկինք հաստատեցան. և հոգւով բերանոյ նորա ամ զօրութիք 7 նց։ *Ժողովեաց ոնց 'ի տիկ զջուրս ծովու. և դնէ 'ի խորս զգանձս իւր։ 8 *Երկիցէ 'ի Տէ ամ երկիր. և 'ի նմա-նէ դողասցեն ամ բնակիչք աշխարհի։ 9 *‖Զի նա ասաց, և եղեն. ինքն հրա-10 մայեաց, և հաստատեցան։ *Տր ցրուէ զխորհ-

‖Ծնն. 1. 1.

‖Յուդ. 16. 17.

զխորհուրդս հեթանոսաց. անարգէ զխորհուրդս ժողովրդոց: և արհամարհէ զխորհուրդս իշխանաց: 11 *Խորհուրդք Տն յաւիտեան մնան. խորհուրդք սրտի նր յազգէ մինչև յազգ: 12 *Երանի ազգի որոյ Տր Ած օգնական է նր. ժողովուրդ՝ զոր ընտրեաց ՚ի ժառանգութի իւր: 13 *Յերկնից նայեցաւ Տր յամ որդիս մարդկան: 14 *՚Ի պատրաստ բնակութենէ իւրմէ հայեցաւ յամ բնակիչս աշխարհի: 15 *Որ ստեղծ առանձին զսիրտս նոցա. որ ՚ի միտ առնու զամ գործս նց: 16 *Ոչ թէ ՚ի բազում զօրս իւր ապրեսցի թագաւոր. և ոչ սկայ ՚ի բազում զօրութե իւրում: 17 *Սուտ է ձի ՚ի փրկութե իւրում. ՚ի բազում զօրութե իւրում ոչ ապրեցուցանէ զհեծեալն: 18 *Աչք Տն ՚ի վերայ երկիւղածաց իւրոց. ոյք յուսան յողորմութի նորա: 19 *Փրկել ՚ի մահուանէ զանձինս նց. և կերակրել զնոսա ՚ի սովում: 20 *Անձինք մեր համբերեսցեն Տն. զի օգնական և պաշտպան մեր է: 21 *Ի նա ուրախ եղիցին սիրտք մեր. և յանուն սբ նր յուսացուք: 22 *Եղիցի ողորմութի քո Տր ՚ի վերայ մեր. որպ յուսացաք ՚ի քեզ:

‖Ա.Թագ 21.

1 Սաղմոս Դաւթի. ՚ի ժամանակի յորժամ այլագոնեաց զդէմս իւր առաջի աբիմելէքայ: և արձակեաց զնա՝ և գնաց: ԼԳ:

Օրհնեցից զՏր յամ ժամ. 2 յամ ժամ օրհնութի նորա ՚ի բերան իմ է: 3 *Ի Տր պարծեսցի անձն իմ. լուիցեն հեզք՝ և ուրախ եղիցին: 4 *Մեծ արարէք զՏր ինև. և բարձր արասցուք զանուն նր ՚ի միասին: 5 *Խնդրեցի ՚ի Տէ և լուաւ ինձ. յամ նեղութեց իմոց փրկեաց զիս: 6 *Մատիք առ Տր. և առէք զլոյս. և երեսք ձեր մի ամաչեսցեն: 7 *Այս աղքատ կարդաց առ Տր. և Տր լուաւ սմա. յամ նեղութեց սորա փրկեաց զսա: 8 *Բանակ հրեշտակաց Տն շուրջ է զերկիւղածովք իւրովք. և պահէ զնս: 9 *Ճաշակեցէք՝ և տեսէք զի քաղցր է Տր. երանեալ է այր՝ որ յուսայ ՚ի նա: 10 *Երկերուք ՚ի Տէ ամ սբք նորա. զի ոչ ինչ է պակասութի երկիւղածաց նորա: 11 * ‖Մեծամեծք աղքատացան՝ և քաղցեան. բայց ոյք խնդրեն զՏր. մի պակասեսցի ՚ի նոցանէ ամ բարութի: 12 *Եկայք որդիք իմ, և լուարուք ինձ. և զերկիւղ Տն ուսուցից ձեզ: 13 * ‖Ո՛վ է մարդ՝ որ կամի զկեանս. և սիրէ զաւուրս իւր տեսանել ՚ի բարութե: 14 *Դադարեա՛ զլեզու քո ՚ի չարութեէ. և շրթունք քո մի խօսեսցի զնենգութի: 15 *Խոտորեա՛ ՚ի չարէ՝ և արա՛ զբարի. խնդրեա՛ զխաղաղութի՝ 16 և երթ զհետ նորա: * ‖Աչք Տն ՚ի վերայ արդարոց. և ականջք նորա ՚ի 17 վերայ աղօթից նց: *Երեսք Տն ՚ի վր չարագործաց. սատակել յերկրէ զյի 18 շատակս նոցա: *Կարդացին արդարք առ Տր. և Տր լուաւ նց. յամ նեղութե 19 նց փրկեաց զնս: *Մերձ է Տր առ այնոսիկ՝ ոյք մաշեալք են սրտիւք. և զխո 20 նարհս հոգւով կեցուցանէ: *Բազում նեղութիք են արդարոց՝ յամէ փրկէ 21 զնս Տր: *և պահէ զամ ոսկերս նոցա՛ 22 և մի ՚ի նոցանէ մի՛ փշրեսցի: *Մահ մեղաւորին չար է. բայց ոյք ատեն 23 զարդարն զղջասցին: *Փրկէ Տր զանձինս ծառայից իւրոց. մի՛ զղջասցին ամենեքեան. ոյք յուսացեալ քեն ՚ի նա:

‖Պ... 1. 53. — ‖Ա.Պետ 3.10. — ‖Սիրաք 15.20. — Եբրայ 4. 13.

Սաղմոս Դաւթի: ԼԴ:

1 Դատեա՛ Տր զայնոսիկ՝ որք դատեն զիս. մարտի՛ր ընդ այնոսիկ՝ ոյք 2 մարտնչին ընդ իս: *Ա՛ռ զզէն և զապար քո. 3 և արի՛ յօգնել ինձ: *Հա՛ն զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց՝ և արգել զնոսա. ասա՛ դու ցանձն իմ՝ թէ 4 փրկութի քո եմ: *Ամաչեսցեն՝ և յամօթ լիցին՝ ոյք խնդրեն զանձն իմ. դարձցին յետս՝ և ամաչեսցեն՝ ոյք խոր 5 հին ինձ չար: *Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ. և հրեշտակ Տն 6 նեղեսցէ զնս: *Եղիցին ճանապարհք նոցա ՚ի խաւար՝ և ՚ի գայթագղութի. և հրեշտակ Այ հալածեսցէ զնոսա: 7 *Ի նանիր թաքուցին ինձ զորոգայթ ապականութե իւրեանց. ՚ի նանիր նա 8 խատեցին զանձն իմ: *Հասցէ ՚ի վերայ նց որոգայթ՝ զոր ոչ գիտասցեն. և որս՝ զոր թաքուցին՝ առցէ՛ զոտս նոցա՛. 9 և յորոգայթ ՚ի նոյն անկցին: *Այլ անձն իմ ցնծասցէ ՚ի Տր. ուրա՛խ եղիցի 10 ՚ի փրկութե նորա: *և ամ ոսկերք իմ ասասցեն՝ Տր ո՛վ նմանի քեզ: փրկել զաղքատն ՚ի ձեռաց հզօրին. զաղքատն և զտնանկն յայնցանէ՝ ոյք յափշտակեն 11 զնա: *Յարեան ՚ի վր իմ վկայք չարեաց. զորինչ ոչ գիտէի՝ հարցանէին 12 ցիս: *Հատուցին ինձ չար փոխանակ բարւոյ. անժառանգել զանձն իմ խորհեցան յորդւոց մարդկանէ: 13 *Ես ՚ի նեղել նոցա՛ քուրձ զգենուի. խոնարհ առնէի պահօք զանձն իմ. և աղօթք իմ ՚ի ծոց իմ դարձցին: 14 *Որպ զեղբայր՝ և զընկեր այսպէս հաճոյ լինէի. որպէս զսգաւոր՝ և զտր- 15 տում այնպէս խոնարհ առնէի: *Ի վր իմ ուրախ եղեն՝ և ժողովեցան. ժողովեցան յիս տանջանք՝ և ես ոչ ծա- 16 նեայ. *ցրուեցան՝ և ոչ զղջացան:

փորձեցին զիս՝ և արհամարհեցին . արհամարհանօք կրճտեցին 'ի վ(ե)ր իմ զատամունս իւրեանց ։ * Տէր երբ տեսցես ։ 17 'Ի բաց արա զանձն իմ 'ի խորամանկութենէ նոցա . յառիւծուց զմիամօրութիւն իմ ։ * Խոստովան եղէց քեզ Տէր 18 յեկեղեցիս մեծս . և 'ի ժողովս բազմաց օրհնեցից զքեզ ։ * Մի՛ ուրախ եղիցին 19 յիս թշնամիք իմ . ‖ որք ատէին զիս 'ի տարապարտուց . ակնարկէին առնէին յիս աչօք իւրեանց ։ * Ընդ իս զխաղա 20 ղութիւն խօսէին . և ինքեանք բարկութեամբ զնենգութիւն խորհէին ։ * Բացին 21 'ի վ(ե)ր իմ զբերանս իւրեանց՝ և ասացին . այո՛ այո՛ տեսին աչք մեր ։ * Տեսեր Տէր՝ 22 և մի՛ լռեր . Տէր մի՛ 'ի բաց առնիր յինէն ։ * Զարթի՛ր՝ և հայեա՛ց Տէր յի- 23 րաւունս իմ, Ա(ստուա)Ծ իմ, և Տէր իմ . 'ի դատաստանս իմ ։ * և իրաւ արա ինձ ըստ 24 արդարութեան քում, Տէր Ա(ստուա)Ծ իմ ։ Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ ։ * և մի՛ ասասցեն 'ի սիրտս իւրեանց՝ 25 թէ վա՛շ վա՛շ անձանց մերոց՝ զի ընկլուզաք զնա ։ * Ամաչեսցեն՝ և յամօթ լի- 26 ցին . որք խնդան ընդ չար իմ . զգեցցին զամօթ՝ և զանարգանս՝ որք մեծաբանեն 'ի վերայ իմ ։ * Ցնծասցեն՝ և 27 ուրախ լիցին 'ի քեզ ամենեքեան . որք կամին ընդ արդարութիւն իմ ։ Ասասցեն յամ ժամ, մեծ է Ա(ստուա)Ծ . որք կամին զխաղաղութիւն ծառայի քո ։ * Լեզու 28 իմ խօսեսցի զարդարութիւն քո . զօրհանապազ զգովութիւն քո ։

‖ Յովհ. 15.25.

'Ի կատարած ծառայի՛ն Տ(եառ)Ն Դաւթի ։ Լ.Ե ։ 1

Ասէ անօրէնն մեղանչել ընդ միտս 2 իւր . չիք երկիւղ Ա(ստուծո)Յ առաջի աչաց նորա ։ * ‖ Նենգեաց առաջի ն(որ)ա . գտա 3 նել զանօրէնութիւն իւր . և ատել զնա ։ * Բանք բերանոյ ն(որ)ա անօրէնութիւն և 4 նենգութիւն են ։ Ոչ կամեցաւ նա իմանալ զբարի ։ * զանօրէնութիւն խորհե- 5 ցաւ յանկողնի իւրում ։ Եկաց նա յամ ճանապարհ . որ ոչ է բարի . և 'ի չարէ նա ոչ ձանձրացաւ ։ * Տէր յերկինս է 6 ողորմութիւն քո . ճշմարտութիւն քո մինչև յամպս ։ * Արդարութիւնք քո ո՛րպէս լե- 7 րինք Ա(ստուծո)Յ . իրաւունք քո որպէս խորք բազումք . զմարդիկ և զանասունս կեցուցանես դու Տէր ։ * Ո՛րպէս զի բազմա- 8 ցուցեր զողորմութիւն քո Ա(ստուա)Ծ . այլ որդիք մարդկան 'ի հովանի թևոց քոց յուսասցին ։ * Արբեսցին նք 'ի պարարտութենէ 9 տան քո . և զուղխս փափկութեան քո տացես ըմպել նոցա ։ * 'Ի քեն է Տէր 10 աղբիւր կենաց . և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս ։ * Ձգեա՛ զողոր- 11 մութիւն քո՝ որք ճանաչեն զքեզ . զար-

‖ Մ եր. 13.3.

դարութիւն քո՝ որք ուղիղ են սրտիւք ։
12 * Մի՛ եկեսցէ 'ի վ(ե)ր մեր ոտն ամբարտաւանից . և ձեռք մեղաւորաց մի՛ դո
13 ղդողեսցեն զմեզ ։ * Անդ անկցին ամենեքեան՝ որք գործեն զանօրէնութիւն . մերժեցան . և այլ մի՛ կարասցեն հաստատել ։

1 Սաղմոս Դաւթի ։ Լ.Զ ։

ՄԻ՛ ՆԱԽԱՆՁԻՐ ընդ չարս . և մի՛ ընդ այնոսիկ՝ որք գործեն զանօրէ-
2 նութիւն ։ * Զի որպէս զխոտ վաղվաղակի ցամաքեսցին . որպէս զդալարի խոտոյ վաղվաղակի անկցին ։
3 * Յուսա՛ 'ի Տէր՝ և արա՛ զքաղցրութիւն . բնակեա՛ց յերկրի՝ և հովուեսցիս 'ի մե-
4 ծութեան նորա ։ * Փափկեա՛ 'ի Տէր՝ և նա տացէ քեզ զխնդրուածս սրտի քո ։
5 * յայտնեա՛ առաջի Տ(եառ)Ն զճանապարհս քո . և յուսա՛ 'ի նա ։ Զի նա արասցէ ։
6 * և հանցէ որպէս զլոյս զարդարութիւն քո . և զիրաւունս քո որպէս զօրհասարակ ։
7 * Հնազանդ լեր Տ(եառ)Ն . և ծառայեա՛ նմա . և մի՛ նախանձիր ընդ այնոսիկ՝ որոց աջողեալ իցեն ճանապարհք իւրեանց . ընդ մարդոյ՝ որ գործէ զանօրէնու-
8 թիւն ։ * Լռեա՛ 'ի բարկութենէ՝ և հանդիր 'ի սրտմտութենէ . և մի՛ նախանձիր
9 ընդ չարս ։ * Զի չարք վաղվաղակի սատակեսցին . բայց որք համբերեն Տ(եառ)Ն՝ նոքա ժառանգեսցեն զերկիր ։
10 * Փոքր մի ևս՝ և այլ ոչ իցէ ամպարիշտն . խնդրեսցես զտեղի նորա . և ո՛չ
11 գտցես ։ * ‖ Այլ որք հեզքն են՝ նոքա ժառանգեսցեն զերկիր . և փափկասցին 'ի բազում խաղաղութեան իւրեանց ։
12 * Սպասէ մեղաւորն արդարոյ . և կրճտէ 'ի վերայ նորա զատամունս իւր ։
13 * այլ Տէր ծիծաղեսցի զնովաւ ։ Քանզի յառաջագոյն տեսանէ . զի հասեալ
14 է օր նորա ։ * Սուր հանին մեղաւորք՝ և լարեցին զաղեղունս իւրեանց ։ հարկանել զաղքատն՝ և զտնանկն . սպանանել զայն որ խոնարհ է սրտիւ ։
15 * Սուրք ն(ո)ց մտցեն 'ի սիրտս ն(ո)ց . և աղե-
16 ղունք ն(ո)ց փշրեսցին ։ * Լաւ է սակաւիկ ինչ արդարոյ . քան զբազում մեծու-
17 թիւն մեղաւորաց ։ * և բազուկք ամպարշտաց խորտակեսցին ։ Հաստատէ
18 Տէր զարդարս ։ * և ճանաչէ զաւուրս ամբծից . ժառանգութիւն նոցա յաւի-
19 տեան եղիցի ։ * Մի՛ ամաչեսցեն նք 'ի ժամանակս նեղութեան . այլ յաւուրս
20 սովու յագեսցին ։ * Զի հա մեղաւորք

կորի-

‖ Առակ. 23.17. և 24.1.

‖ Մատ. 5.4.

չարութեան

կորիցեն ․ այլ թշնամիք Տն 'ի փառաւո
րել և 'ի բարձրանալ իւրեանց պակա_
սեսցին՝ որպէս ծուխ զի պակասի ։
21 * Փոխ առնու մեղաւորն ․ և ոչ հատու
ցանէ ․ այլ որ արդարն է՝ ողորմի , և
տայ ։ 22 * Այք օրհնեն զնա , ժառանգես
ցեն զերկիր ․ և ոյք անիծանեն , սատա
կեսցին 'ի նմանէ ։ 23 * Ի Տէ ուղղին
գնացք առն ․ զճանապարհս նորա նա
կամի յոյժ ։ 24 * Թէպէտ և գայթագ
ղեսցի՝ նա մի կործանեսցի ․ զի Տէր
ձեռնկալու է նր ։ 25 * Մանուկ էի ես՝
և ծերացայ ․ և ոչ տեսի զարդարն ար
համարհեալ՝ և ոչ զզաւակ նր թէ մու
րանայ հաց ։ 26 * Զօրհանապազ ողորմի՝
և տայ փոխ ․ զաւակ նր օրհնեալ եղիցի ։
27 * Խոտորեա 'ի չարէ՝ և արա զբարի ․
և բնակեսցես յաւիտեանս յաւիտենից
'ի նմա ։ 28 * Տր սիրէ զիրաւունս՝ և ոչ
ընդվայր համարի զսուրբս իւր ․ այլ
յաւիտեան պահէ զնս ։ Անօրէնք հա
լածեսցին 'ի միասին ․ և զաւակ ամ
պարշտաց սատակեսցի ։ 29 * Այլ արդարք
ժառանգեսցեն զերկիր ․ և բնակես_
ցեն յաւիտեանս յաւիտենից 'ի նմա ։
30 * Բերան արդարոյ խորհի զիմաստու_
թն ․ և լեզու նր խօսեսցի զիրաւունս ։
31 * Օրէնք Այ իւրոյ են 'ի սրտի իւր_
ում ․ և մի գայթագղեսցին գնացք նր ։
32 * Հայի մեղաւոր ընդ արդար՝ և խնդ
րէ սպանանել զնա ։ 33 * այլ Տր ոչ թո
ղու զնա 'ի ձեռս նորա՝ և ոչ դատա_
պարտէ ․ յորժամ դատէ զնա ։ 34 * Համ
բեր Տն ․ և պահեա զճանապարհս նր ․
և բարձրարասցէ զքեզ 'ի ժառանգել
զերկիր ․ և զսատակումն մեղաւորաց
տեսցես ։ 35 * Տեսի զամպարիշտն վերա_
ցեալ՝ և բարձրացեալ որպէս զմայրս լիբա
նանու ։ 36 * Անցի՝ և ահա ոչ էր ․ խնդրե_
ցի՝ և ոչ գտաւ տեղի նր ։ 37 * Պահեա
զամբծութի՝ և տես զուղղութի ․ զի
գոն մնացուածք առն խաղաղարարի ։
38 * Անօրէնք հալածեսցին 'ի միասին ․ և
զաւակ ամպարշտաց կորիցէ ։ 39 * Փր_
կութի արդարոց 'ի Տէ է ․ վերակացու
է նոցա 'ի ժամանակս նեղութե ։
40 * Օգնեսցէ նց Տր ․ և փրկեսցէ զնս ․
ապրեցուսցէ զնս 'ի մեղաւորաց ․ և կե
ցուսցէ զնս՝ զի յուսացան 'ի նա ։

Սաղմոս Դաւթի ։ առ 'ի յիշատակէ շաբա_
թու ։ ԼԷ ։

1 ՏՐ մի սրտմտութբ քով յանդի_
մաներ զիս ․ և մի բարկութբ
քով խրատեր զիս ։ 3 * Զի նետք
քո հարան յիս ․ և յիս հաստատեցաւ
ձեռն քո ։ 4 * Ոչ գոյ բժշկութի մարմնոյ
իմոյ ․ յերեսաց բարկութե քոյ ․ Ոչ է
խաղաղութի ոսկերաց իմոց ․ յերեսաց
մեղաց իմոց ։ 5 * Անօրէնութիք իմ
բարձրացան քան զգլուխ իմ ․ որպէս զբեռն
ծանր ծանրացան 'ի վր իմ ։ 6 * Նեխե_
ցան , և փտեցան վէրք իմ ․ յերեսաց
անզգամութե իմոյ ։ 7 * Տառապեցայ՝
և խոնարհ եղէ մինչև յոյժ ․ զօրհա_
նապազ տրտում գնայի ։ 8 * զի անձն իմ
լի եղև չարչարանօք ․ և ոչ գոյ բժշկու
թի մարմնոյ իմոյ ։ 9 * Չարչարեցայ՝ և
խոնարհ եղէ մինչև յոյժ ․ մռնչէի առ հե
ծութե սրտի իմոյ ։ 10 * Տր առաջի քո է
ամ ցանկութի իմ ․ և հեծութի իմ 'ի
քէն ոչ ծածկեցաւ ։ 11 * Սիրտ իմ խռովե
ցաւ յիս ․ և եթող զիս զօրութի իմ ․ լոյս
աչաց իմոց՝ և այս ոչ եղև ընդ իս ։
12 * Բարեկամք իմ , և մերձաւորք իմ ,
առաջի իմ մերձեցան՝ և կացին ․ և
մերձաւորք իմ հեռի եղեն յինէն ։
13 * Բռնադատէին զիս՝ և խնդրէին
զանձն իմ ․ ոյք խնդրէին չար 'ի վերայ
իմ ․ խորհեցան զանօրէնութի՝ և զնեն
գութի զօրհանապազ խորհեցան ։
14 * Այլ ես որպէս զխուլ՝ զի ոչ լսէ ․ և որպէս
համր՝ որ ոչ բանայ զբերան իւր ։
15 * Եղէ ես որպէս զմարդ՝ որ ոչ լսէ ․
և ոչ գոն խօսք 'ի բերան նորա ։
16 * Զի 'ի քեզ Տր յուսացայ ․ և դու լուի
ցես ինձ Տր Այ իմ ։ 17 * Ասացի՝ թէ մի ու
րախ եղիցին յիս թշնամիք իմ ․ 'ի սասա
նել ոտից իմոց՝ 'ի վր իմ մեծամեծս
խորհեցին ։ 18 * Զի 'ի տանջանս պատրաստ խօսեցան
եմ ․ և ցաւք իմ առաջի իմ են յամ
ժամ ։ 19 * Զանօրէնութիս իմ պատմե_
ցից ․ և հոգացայց վն մեղաց իմոց ։
20 * Իսկ արդ թշնամիք իմ կենդանի են՝
և զօրացեալ եղեն քան զիս ․ և բա_
զում են , ոյք ատեն զիս տարապար_
տուց ։ 21 * Այք հատուցանէին ինձ չար
փոխանակ բարւոյ ․ չարախօսէին զի ընդ
նէն ․ զի ես երթայի զհետ արդարու_
թե ։ 22 * Մի թողուր զիս Տր Այ իմ ,
և մի 'ի բացէ առնիր յինէն ։ 23 * Հայեաց
յօգնել ինձ՝ Տր փրկութե իմոյ ։

1 Ի կատարած իդիթոմայ ․ Սաղմոս
Դաւթի ։ ԼԸ ։

2 Ասացի թէ պահեցից զճանապարհս
իմ ․ զի մի մեղայց լեզուաւ իմով ։
Եդի պահապան բերանոյ իմոյ ․ 'ի հա
կառակել մեղաւորին առաջի իմ ։
3 * Լուռ եղէ՝ և խոնարհեցայ ․ լռեցի
'ի բարւոյ՝ և ցաւք իմ նորոգեցան յիս ։
4 * Ջեռաւ սիրտ իմ 'ի փորի իմում ․ և
'ի խորհուրդս իմ վառեցաւ հուր ։
5 * Խօսեցայ լեզուաւ իմով ։ և ասացի ․
ցոյց ինձ Տր զկատարած իմ , և զթիւ
աւուրց իմոց՝ քանի՞ոն է ․ զի գիտացից՝
թէ

Սաղմ. 51. 7. Առակ. 31. 25. Սղ. 6. 2.

թէ որչափ ինչ պակասեալ է յինէն։ 6 *Ահա չափով եդեր զաւուրս իմ. և կար զօրութեան իմոյ որպէս ոչինչ է առաջի իմ. սակայն ամենևին ընդունայն է ամ մարդ մնեղի։ 7 *Այլ որպէս 'ի պատկերի շրջի մարդ՝ սակայն 'ի զուր խռովի. գանձէ՝ և ոչ գիտէ ում ժողովէ։ 8 *Իսկ արդ՝ ո՞վ է համբերութիւն իմ, թէ ոչ դու Տր. կամ կար զօրութեան իմոյ՝ թէ ոչ 'ի քէնէ։ 9 *Յամ անօրէնութեանց իմոց փրկեսցես զիս. նախատինս անզգամաց արարեր զիս։ 10 *Լուռ եղէ՝ և ո՛չ բացի զբերան իմ. 11 զի դու արարեր։ *'Ի բաց արա յինէն զհարուածս իմ. զի 'ի զօրութենէ ձեռին քո ես պակասեցայ։ 12 *Յանդիմանութեամբ վասն մեղաց խրատեցեր զմարդ. մաշեցեր որպէս սարդ իոստայն զանձն նորա. սակայն ընդունայն է ամենայն մարդ։ 13 *Լո՛ւր Տէր աղօթից իմոց՝ ունկն դիր խնդրուածաց իմոց. արտասուաց իմոց մի լռեր. Պանդուխտ եմ ես առաջի քո. նժդեհ և անցաւոր՝ որպէս ամենայն հարքն իմ։ 14 *Թո՛յլ արա ինձ՝ զի հանգեայց՝ մինչչև երթեալ իցեմ. և այլ ոչ ևս գտանիցիմ։

'Ի կատարած. Սաղմոս Դաւթի։ ԼԹ։ 1

2 Համբերելով համբերի Տն՝ և նայեցաւ առ իս։ 3 *և լուաւ աղօթից իմոց։ Հան զիս 'ի գբոյ տառապանաց. 'ի կաւոյ և 'ի տղմոյ։ Հաստատեաց 'ի վերայ վիմի զոտս իմ. և ուղղեաց զգնացս իմ։ 4 *Եդ 'ի բերան իմ զօրհնութիւն նոր. զօրհնութիւն Այ մերոյ։ Տեսցեն բազումք՝ և երկիցեն՝ և յուսասցին 'ի Տր։ 5 *Երանեալ է այր որոյ անուն Տն յոյս է նր։ Ոչ հայեցաւ նա 'ի նանրութիւն. և ո՛չ 'ի մոլութիւն սուտ։ 6 *Բազում արարեր դու Տր Աճ իմ զսքանչելիս քո. խորհրդոց քոց՝ և ոչ ոք է՝ որ նմանի քեզ։ Պատմեցի՝ և խօսեցայ՝ և բազում եղեն քան զթիւ։

7 *Ընդ զոհս և ընդ պատարագս ոչ հաճեցար. լսելիս հաստատեցեր ինձ՝ զողջակէզս՝ և զվն մեղացն ոչ խնդրեցեր։ 8 *Յայնժամ ասացի՝ թէ ահաւասիկ գամ. 'ի գլուխս գրոյ գրեալ է վն իմ։ 9 *Առնել զկամս քո Աճ իմ կամեցայ. և զօրէնս քո 'ի մէջ որովայնի իմոյ։ 10 *Աւետարանեցի զարդարութիւն քո յեկեղեցիս մեծս. ահա զշրթունս իմ ոչ արգելից 'ի քէն։ Տր դու գիտացես։ 11 *զի զարդարութիւն քո ոչ ծածկեցի 'ի սրտի իմում. զճշմարտութիւն քո՝ և զփրկութիւն քո։ Ասացի՝ և ոչ թաքուցի զողորմութիւն քո. և զճշմարտութիւն քո 'ի ժողովրդենէ մեծէ։ 12 *Դու Տր մի հեռի առներ զգթութիւն քո յինէն. զի ողորմութիւն քո՝ և ճշմարտութիւն քո՝ 13 յամ ժամ ընկալցին զիս։ *Ուրջ եղեն զինև չարք՝ որոց ոչ գոյր թիւ. հասին ինձ անօրէնութիւնք իմ. և ես ոչ կարացի տեսանել։ Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ՝ և սիրտ իմ եթող 14 զիս։ *Կամեցա՛յ Տր փրկել զիս. և Տր 15 յօգնել ինձ նայեցա՛յ։ *Ամաչեսցեն՝ և յամօթ լիցին՝ որք խնդրեն զանձն իմ բառնալ զնա. դարձցին յետս՝ և ամաչեսցեն՝ որք խորհին ինձ չար։ 16 *Կրեսցեն զամօթ առժամայն վաղվաղակի. որք ասեն ինձ վա՛շ վա՛շ։ 17 *Ցնծասցեն՝ և ուրախ լիցին 'ի քեզ ամենեքեան. որք խնդրեն զքեզ Տր։ Ասասցեն յամ ժամ մեծ է Աճ. որք 18 սիրեն զփրկութիւն քո։ *Ես աղքատ և տնանկ եմ; Աճ խորհեա՛ զիս. օգնական և պաշտպան իմ ես դու Աճ իմ մի յապաղեր։

1 'Ի կատարած. Սաղմոս Դաւթի։ Խ։

2 Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա 3 Տր։ *Տր փրկէ զնա՝ և կեցուցանէ. երանելի առնէ զնա 'ի վերայ երկրի. և ոչ մատնէ զնա 'ի ձեռս թշնամեաց 4 իւրոց։ *Տր օգնական է նմա 'ի մահիճս ցաւոց իւրոց, և զամ անկողինս նորա դարձուցանէ 'ի հիւանդութեն նր։ 5 *Ես ասացի Տէր ողորմեա՛ց ինձ. և բժշկեա՛ զանձն իմ. ես մեղայ քեզ։ 6 *Թշնամիք իմ ասացին ինձ չար՝ երբ իցէ՝ զի մեռցի, և կորիցէ անուն նր։ 7 *Մտանէր տեսանել զնանրութի. խօսէր 'ի սրտի իւրում. և ժողովէր զանօրէնութիւն յանձն իւր։ Արտաքս ելա8 նէր՝ և զնոյն խօսէր։ *զինէն շշնջէին ամ թշնամիք իմ։ Խորհեցան չար 9 'ի վերայ իմ. *բան անօրէնութեան եդին 'ի վերայ իմ։ Մի թէ որ ննջիցէն և 10 այլ ո՛չ ևս յաւելցի յառնել. *քանզի և այրն խաղաղութեան իմոյ՝ յոր եսն յուսացայ։ *Որ ուտէր զհաց իմ. յաճախեաց առնել ինձ զխաբէութի։ 11 *Այլ դու Տր ողորմեա՛ց ինձ. և կանգնեա՛ զիս. և ես հատուցից նոցա։ 12 *Յայսմ ծանեայ՝ զի հաճեցար ը իս. զի մի ուրախ եղիցին յիս թշնամիք իմ։ 13 *Այլ՝ զիս յանբծութեան իմում ընկալար. և հաստատեցեր զիս առաջի քո 14 յաւիտեան։ *Օրհնեալ Տէր Աճ Իսրայէլի յաւիտենից յաւիտենից՝ եղիցի՝ եղիցի։

Եբրայ. 10.5.
Սաղմ. 69.2.
Սաղմ. 34.4.
Յոհ. 13.18.
Գործ. 1.16.

1 Ի կատարած. վասն իմաստութեան որդւոցն Կորխայ։ ԽԱ։

2 Որպէս փափագի եղջերու յաղբերս ջուրց. այնպէս փափագի անձն իմ առ քեզ Ած։ 3 * Ծարաւի է անձն իմ առ քեզ Ած. հզօր և կենդանի. երբ եկից՝ երևեցայց երեսացդ Այ։ 4 * Եղեն ինձ արտասուք իմ կերակուր 'ի տուէ և 'ի գիշերի. և այն՝ զի ասէին ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Ած քո։ 5 * Զայս որպէս յիշէի. տառապէր յիս անձն իմ. քաջալերէի. զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տանն Այ։ 'Ի ձայն ցնծութեան խոստովանութեան. և 'ի ձայն բարեկենդանութեան։ 6 * Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Ած. խոստովանեա՛ նմա՝ փրկիչ երեսաց իմոց Ած է։ 7 * Անձն իմ յոյժ խռովեցաւ. վասն այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն յորդանանու, 'ի հերմոնէ լեառնէ փոքունէ։ 8 * Խորք խորոց կարդացին առ քեզ. 'ի ձայն սահանաց քոց։ Ամ զբօսանք քո՝ և ալիք քո՝ անցին 'ի վր իմ։ 9 * 'Ի տուէ պատուիրեաց Տր զողորմութի իւր. 'ի գիշերի զօրհնութի նոր. և աղօթք իմ առ Ած վասն կենաց իմոց։ 10 * Ասացի Այ՝ ընդունող իմ ես. ընդէ՞ր մերժեցեր զիս. ընդէ՞ր տրտում գնամ ես 'ի նեղել թշնամւոյ իմոյ։ 11 * 'Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս թշնամիք իմ. յասել ցիս զօրհանապազ. թէ ո՞ւր է Ած քո։ 12 * Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Ած. խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Ած է։

1 Սաղմոս Դաւթի։ ԽԲ։

Դատ արա ինձ Ած. և իրաւ արա ինձ 'ի դատաստանի իմում։ Յազգէ որ ոչ է սուրբ. 'ի մարդոյ մեղաւորէ՝ նենգաւորէ փրկեա՛ զիս։ 2 * Դու Ած, հզօրիչ իմ ես. ընդէ՞ր մոռացար զիս. ընդէ՞ր տրտում գնամ ես. 'ի նեղել թշնամւոյ իմոյ։ 3 * Առաքեա՛ Տր զլոյս քո՝ և զճշմարտութիւս քո, զի նոքա առաջնորդեսցեն ինձ. ածցեն զիս 'ի լեառն սուրբ՝ և յարկս քո։ 4 * Մտից առաջի սեղանոյ Այ առ Ած, որ ուրախ առնէ զմանկութի իմ. Խոստովան եղէց քեզ՝ օրհնութբ, Ած, Ած իմ։ 5 * Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Ած. խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

1 Ի կատարած. որդւոցն Կորխայ. սաղմոս իմաստութեան։ ԽԳ։

2 Ած ականջօք մերովք լուաք. և հարք մեր պատմեցին մեզ։ Զգործս, զոր գործեցեր յաւուրս նոցա յաւուրսն առաջինս։ 3 * Ձեռն քո խլեաց զհեթանոսս. և զնս տնկեցեր. չարչարեցեր զժողովուրդս՝ և հաներ զնոսա։ 4 * Զի ոչ թէ սրով իւրեանց ժառանգեցին զերկիր. և ոչ բազուկ նց փրկեաց զնս. Այլ աջ քո՝ և բազուկ քո՝ և լոյս երեսաց քոց. զի հաճեցար ընդ նոսա։ 5 * Դու ինքն ես՝ թագաւոր իմ, և Ած իմ. որ հրամայեցեր զփրկութիս յակոբայ։ (հրամայես) 6 * Քւ զթշնամիս մեր հարցուք՝ և անուամբ քով արհամարհեսցուք զյարուցեալսն 'ի վերայ մեր։ 7 * Ոչ թէ յաղեղն իմ յուսացեալ եմ. և ո՛չ սուր իմ կեցուցանէ զիս։ 8 * Այլ դու փրկեցեր զմեզ 'ի թշնամեաց մերոց. և զատելիս մեր յամօթ արարեր։ 9 * Աստուծով պարծիցուք զօրհանապազ. և անուան նորա խոստովան եղիցուք յաւիտեան։ 10 * Բայց արդ՝ մերժեցեր, և անարգեցեր զմեզ. և ո՛չ ելեր Ած ընդ զօրս մեր։ 11 * Դարձուցեր զմեզ յետս քան զթշնամիս մեր. և ատելիք մեր յափշտակեցին զմեզ։ 12 * Ետուր զմեզ որպէս զոչխար 'ի սպանումն. և ընդ հեթանոսս ցրուեցեր զմեզ։ 13 * Վաճառեցեր զժողովուրդս քո առանց գնոց. և ոչ գոյ թիւ ազաղակի մերոյ։ 14 * Արարեր զմեզ նախատինս դրացեաց մերոց. ծաղր և այպն կատականաց այնոցիկ՝ որք շուրջ էին զմեօք։ 15 * Արարեր զմեզ յառակս հեթանոսաց. 'ի շարժել զգլուխս ժողովրդոց։ 16 * Զօր ամենայն նախատինք իմ առաջի իմ են. և ամօթ երեսաց իմոց ծածկեաց զիս։ 17 * 'Ի ձայնէ նախատողին և չարախօսին՝ յերեսաց 18 թշնամւոյն՝ և հալածչին։ * Այս ամ եկն 'ի վերայ մեր՝ և մեք զքեզ ո՛չ մոռացաք. և ո՛չ ստեցաք ուխտի քում։ 19 * և ո՛չ դարձաք յետս սրտիւք մերովք. Դարձուցեր զշաւիղս մեր 'ի ճանապարհաց քոց։ 20 * Խոնարհ արարեր զմեզ 'ի տեղի չարչարանաց. և ծածկեցին զմեզ ստուերք մահու։ 21 * Եթէ մոռացեալ իցէ մեր զանուն Այ մերոյ. կամ ձգեալ իցէ զձեռս մեր յաստուածս օտարս։ 22 * Սակայն Ած խնդրէ զայս. զի նա քննէ զգաղտնիս սրտից մերոց։ ‖ Վս քո մեռանիմք զօրհանապազ՝ համարեցաք ոպ զոչխար 'ի սպանումն։ ‖ Հռոմ. 8. 36. 23 * Զարթի՛ր՝ ընդէ՞ր ննջես Տր

արի

արի՛ եւ մի՛ մերժեր զմեզ իսպառ:
* Ընդէ՞ր դարձուցանես զերեսս քո 'ի
մեզնէ՞ մոռանաս զաղքատութիւն եւ զնե-
ղութիւն մեր: * Խոնարհ եղեն մինչեւ
'ի հող անձինք մեր. եւ յերկիր կցեցան
մէջք մեր: * Արի՛ Տէ՛ր օգնեա՛ մեզ. եւ
փրկեա՛ զմեզ վասն անուան քոյ:

'Ի կատարած. վասն այլայլելոց ձայնակցաց. որդ-
ւոցն Կորխայ. իմաստութիւն երգ վասն սի-
րելւոյն: ԽԴ:

Բղխեաց սիրտ իմ զբան բարի. եւ
ասեմ զգործս իմ թագաւորի:
Լեզու իմ որպէս զգրիչ արագագիր
դպրի: * Գեղեցիկ տեսլեամբ քան
զամենայն որդիս մարդկան: Սփռե-
ցաւ շնորհք 'ի շրթունս քոյ՝ վ՛ն այսո-
րիկ օրհնեաց զքեզ Ա՛Ծ յաւիտեան:
* Ա՛Ծ զսուր ընդ մէջ քո՛ հզօր:
* Վայելչութեամբ եւ գեղով քով: Լա՛րեա՛
ուղղեա՛ եւ թագաւորեա՛ վ՛ն ճշմարտու-
թեան՝ եւ հեզութեան՝ եւ արդարութեան. եւ
առաջնորդեսցէ քեզ սքանչելապէս աջ
քո: * Նետք քո սրեալք են հզօր. ժո-
ղովուրդք 'ի ներքոյ քո անկցին. 'ի
սիրտս թշնամեաց թագաւորի:
* ‖ Աթոռ քո Ա՛Ծ յաւիտեանս յաւի-
տենից՝ գաւազան ուղղութեան գաւա-
զան արքայութեան քոյ: * Սիրեցեր զար-
դարութիւն. եւ ատեցեր զանօրէնութիւն:
Վասն այսորիկ էօծ զքեզ Ա՛Ծ Ա՛Ծ քո
իւղով ուրախութեան. առաւել քան զըն-
կերս քո: * Զմուռս՝ եւ զհաշիւն՝ եւ
զկասիայ՝ 'ի զգեստուց քումմէ. 'ի տաճա-
րաց փղոսկրելից ուստի ուրախ արա-
րին զքեզ: * դստերք թագաւորաց 'ի
պատիւ: Կացցէ դշխոյ ընդ աջմէ քում
մէ 'ի հանդերձս ոսկէհուռս զարդա-
րեալ եւ պաճուճեալ: * Լո՛ւր դուստր՝
եւ տե՛ս. խոնարհեցո՛ զունկն քո. մոռա՛
զժողովուրդ քո եւ զտուն հօր քոյ:
* զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քոյ:
Սա ինքն է Տէ՛ր քո՝ երկիրպագցես սմա՛
եւ դուստր ծուրայ երկիրպագցէ սմա
պատարագօք: * Զերեսս նորա պաշ-
տեսցեն մեծամեծք 'ի ժողովրդոց:
* Ամենայն փառք դստեր թագաւորի
'ի ներքոյ. 'ի վերջաւորս ոսկէհուռս:
* զարդարեալ եւ պաճուճեալ: Տարցին
թագաւորի կուսանք զհետ նորա. եւ
զընկերս նորա տարցին նմա: * Ածցին
ցնծութեամբ՝ եւ ուրախութեամբ. եւ տարցին
'ի տաճար թագաւորի: * Եւ փոխանակ
հարց քոց եղիցին որդիք քո: Կացուս-
ցես զնոսա իշխանս ընդ ամենայն եր-
կիր: * Յիշեսցի անուն քո ընդ ամե-
նայն ազգս ազգաց: Վասն այսորիկ
ժողովուրդք խոստովան եղիցին առ
քեզ յաւիտեան, եւ յաւիտեանս յա-
ւիտենից:

‖ Եբրա. Ա. 8.

'Ի կատարած. որդւոցն Կորխայ. 'ի վերայ գաղտ-
նեաց: Սաղմոս Դաւթի: ԽԵ:

Ա՛Ծ մեր ապաւէն, եւ զօրութիւն. օգնա-
կան 'ի վ՛ր նեղութեանց՝ որք գտին
զմեզ յոյժ: * Վ՛ն այսորիկ ոչ երկիցուք
մեք 'ի խռովիլ երկրի. 'ի փոփոխել լե-
րանց 'ի սիրտս ծովու: * Գոչեցի՛ն եւ
խռովեցան ջուրք նոցա. խռովեցան
լերինք 'ի զօրութենէ նորա: * Գնացք
գետոց ուրախ առնեն զքաղաքն Ա՛յ.
եւ ս՛բ արար զյարկս իւր բարձրեալն:
* Ա՛Ծ 'ի մէջ նո՛ր՝ եւ նորա մի՛ սասանես-
ցին. օգնեսցէ նոցա Ա՛Ծ՝ 'ի վաղորդե-
նէ մինչեւ 'ի վաղորդեան: * Խռովե-
ցան հեթանոսք՝ եւ խոնարհեցան թա-
գաւորութիւնք՝ ետ զձայն իւր բարձ-
րեալն. եւ խռովեցաւ երկիր: * Տէ՛ր զօ-
րութեանց ընդ մեզ. ընկալուչ է մեր Ա՛Ծ
յակոբայ: * Եկա՛յք՝ եւ տեսէ՛ք զգործս
Ա՛յ. որ արար զնշանս եւ զարուեստս
'ի վերայ երկրի: * Եհար զպատերազմ
'ի ծագաց մինչ 'ի ծագս երկրի. զաղե-
ղունս փշրեաց՝ զզէնս խորտակեաց. եւ
զասպարս այրեաց հրով: * Կանխեցէ՛ք՝
եւ ծաներո՛ւք, զի ես եմ Ա՛Ծ. բարձր
եղէց 'ի հեթանոսս, եւ բարձրացայց 'ի
վ՛ր երկրի: * Տէ՛ր զօրութեանց ընդ մեզ.
ընդունօղ է մեր Ա՛Ծ յակոբայ:

'Ի կատարած. վասն որդւոցն Կորխայ:
Սաղմոս Դաւթի: ԽԶ:

Ծափս հարէք ամենայն հեթա-
նոսք. աղաղակեցէ՛ք առ Ա՛Ծ 'ի
ձայն ցնծութեան: * Զի Տէ՛ր բարձրեալ եւ
ահարկու՝ թագաւոր մեծ 'ի վ՛ր ա՛մ
երկրի: * Հնազանդ արար զժողո-
վուրդս մեզ. եւ զհեթանոսս 'ի ներքոյ
ոտից մերոց: * Ընտրեաց զմեզ իւր 'ի
ժառանգութիւն. զգեղեցկութիւն յակո-
բայ, զոր սիրեաց: * ‖ Համբարձաւ Ա՛Ծ
օրհնութեամբ. եւ Տէ՛ր մեր ձայնիւ փողոյ:
* Սաղմո՛ս ասացէք Ա՛յ մերում. սաղ-
մո՛ս ասացէք թագաւորին մերում,
սաղմո՛ս ասացէք: * Թագաւոր մեծ 'ի
վ՛ր ա՛մ երկրի Ա՛Ծ է. սաղմո՛ս ասացէք
նմա իմաստութեամբ: * Թագաւորեաց
Ա՛Ծ 'ի վերայ հեթանոսաց. Ա՛Ծ նս-
տաւ յաթոռ սրբութեան իւրոյ: * Իշ-
խանք ժողովրդոց ժողովեցան առ Ա՛Ծ
աբրահամու. զի Ա՛յ զօրութիւնք յերկ-
րէ յոյժ համբարձան:

‖ 2 Թագ. 6. 15.

Սաղմոս օրհնութեան որդւոցն կորխայ. երկրորդ շաբաթու: ԽԷ: 1

Մեծ է Տր̅ և օրհնեալ յոյժ ՚ի քաղաքի Այ̅ մերոյ. ՚ի լերին սբ̅ նր̅: 2 * Հաստատմամբ ցնծացոյց զնծութի ա̅մ երկիր. լերինք սիոնի. կողմանք հիւսիսոյ՝ քաղաք թագաւորի մեծի: 3 * Այ̅ ՚ի տաճարս իւրում յայտնի է. ՚ի ժամանակի երբ օգնական լինէր նոցա: 4 * Այ̅ հաւատիկ թագաւորութիք երկրի ժողովեցան. և անկցին ՚ի միասին: 5 * Նոքեանք տեսին այսպէս՝ և զարմացան. խռովեցան՝ սասանեցան: 6 * և դողումն կալաւ զնոսա: 7 * Անդ երկունք որպէս ՚ի ծննդեան. ՚ի հողմն սաստիկ. փշրեսցէ զնաւս ՚ի թարսիս: 8 * Որպէս լուաք. սոյնպէս և տեսաք ՚ի քաղաքի Տն̅ զօրութեց ՚ի քաղաքի Այ̅ մերոյ: Այ̅ հիմունս էարկ նմա յաւիտեան. 9 * ընկալաք Այ̅ զողորմութի քո՝ ՚ի մէջ ժողովրդեան քոյ: 10 * Ըստ անուան քում Այ̅ սոյնպէս և օրհնութիք քո ընդ ամենայն տիեզերս. և արդարութբ̅ լի է աջ քո: 11 * Ուրախ եղիցի լեառն սիոն. և ցնծասցեն դստերք յուդայ. վասն իրաւանց քոց Տր̅: 12 * Շրջեցարուք զսիոնիւ, և պահ պանեցէք զնա. պատմեցէք յաշտարակս նր̅: 13 * Դիք զսիրտ ձեր ՚ի վերայ զօրութեց նր̅. բաժանեցէք զամուրս նր̅. զի պատմել կարասջիք յազգ այլ: 14 * Սա է Այ̅ Այ̅ մեր յաւիտեանս յաւիտենից. և նա հովուեսցէ զմեզ մինչև յաւիտեան: 15

Marginal notes: և անցին; Տարսոն

՚Ի կատարած. որդւոցն կորխայ: Սաղմոս դաւթի: ԽԸ: 1

Լուարուք զայս ա̅մ ազգք. ունկնդիր լերուք ամենեքեան. որք բնակեալ էք յաշխարհի: 2 * Ծնունդք երկրի և որդիք մարդկան՝ ՚ի միասին մեծամեծք և տնանկք: 3 * Բերան իմ խօսեսցի զիմաստութի. և խորհուրդ սրտի իմոյ զհանճար: 4 * Խոնարհեցուցից յառակումն զունկն իմ. բացից զառակս օրհնութե ՚ի սկզբանէ: 5 * Ընդէր բնաւ երկնչիմ ես յաւուր չարի. անօրէնութիք գնացից իմոց շուրջ եղեն զինև: 6 * Յուսացեալք ՚ի զօրութի իւրեանց. ՚ի բազմութի մեծութե իւրեանց պարծեցին: 7 * Եղբայր ոչ փրկէ՝ և ոչ փրկէ մարդ՝ և ոչ տայ Այ̅ զփրկանս իւր: 8 * և ոչ զգինս փրկանաց անձին իւրոյ: 9 Աշխատեսցի յաւիտեան: * և կեցցէ իսպառ: 10 և ոչ տեսցէ զապականութի: Յորժամ տեսցէ թէ իմաստունք մեռանիցին, ՚ի միասին անզգամք և

Marginal note: Սաղմ. 77.2. Մատ. 13.35.

Հղ

11 անմիտք կորիցեն: * և թողցեն օտարաց զմեծութի իւրեանց: 12 * Գերեզմանք նոցա՝ տունք նց̅ եղիցին յաւիտեան. և յարկք նոցա յազգէ մինչև յազգ՝ և կարդացին զանուանս նոցա ՚ի հողս իւրեանց: 13 * Մարդ ՚ի պատուի էր՝ և ոչ իմացաւ՝ հաւասարեցաւ անասնոց անմտից՝ և նմանեցաւ նոցա: 14 * Այս ճանապարհ է նց̅՝ գայթագղութե նոցին. յետ այսորիկ բերանօք իւրեանց հաճեսցին: 15 * Որպէս խաշն ՚ի դժոխս մատնեցին. և մահ հովուեսցէ զնոսա՝ և տիրեսցեն նոցա ուղիղք ընդ առաւօտս: Օգնութիք նց̅ մաշեսցին ՚ի դժոխս. և ՚ի փառաց իւրեանց անկցին: 16 * Բայց սակայն Այ̅ փրկեսցէ զանձն իմ՝ ՚ի ձեռաց դժոխոց. յորժամ ընդունիցի զիս: 17 * Մի՛ երկնչիր՝ յորժամ մեծանայ մարդ. և յորժամ բազում լինին փառք տան նորա: 18 * Զի ոչ թէ ՚ի մեռանելն իւրում առցէ ը̅ իւր զա̅մ. և ոչ թէ իջցեն փառք տան նորա ընդ նմա: 19 * Այլ անձն նր̅ ՚ի կեանս իւրում օրհնեսցի. խոստովան եղիցի քեզ՝ յորժամ բարի արասցես դու նմա: 20 * Մտցէ նա մինչև յազգ հարց իւրոց. մինչև յաւիտեան ոչ լոյս մի̅ տեսցէ: 21 * Մարդ ՚ի պատուի էր. և ոչ իմացաւ. հաւասարեցաւ անասնոց անբանից՝ և նմանեցաւ նոցա:

1 Սաղմոս Ասափայ: ԽԹ:

Աստուածոց Տր̅ խօսեցաւ. կոչեաց զերկիր՝ յարևելից մինչև ՚ի մուտս արևու: 2 * Ի սիոնէ մեծ վայելչութի փրկութե գեղոյ նր̅: 3 * Այ̅ մեր յայտնապէս եկեսցէ. և Այ̅ մեր մի̅ դադարեսցէ: Հուր առաջի նր̅ բորբոքեսցի. և շուրջ զնովաւ մրրիկ յոյժ: 4 * Կոչեսցէ զերկինս ՚ի վերուստ և զերկիր՝ դատել զժողովուրդ իւր: 5 * Ժողովել առ ինքն զսբ̅ս իւր՝ որք գնեն զպատարագս ուխտից ՚ի վ̅ր սեղանոյ: 6 * Պատմեսցեն երկինք զարդարութի նր̅. զի Այ̅ դատաւոր է: 7 * Լուր ժողովուրդ իմ. և խօսեցայց ընդ քեզ. և իէլ քեզ վկայեցից. զի Այ̅ Այ̅ քո ես եմ: 8 * Ոչ թէ վս̅ պատարագաց քոց կշտամբեմ զքեզ. զի ողջակէզք քո առաջի իմ են յա̅մ ժամ: 9 * Ոչ ընդունիմ ՚ի տանէ քումմէ զուարակս. և ոչ ՚ի հօտից քոց նոխազս: 10 * Իմ է ա̅մ գազան անտառի. երէ լերանց՝ և ա̅մ անասուն: 11 * Գիտեմ ես զա̅մ թռչունս երկնից. գեղեցկութի վայրի ընդ իս է: 12 * Թէ քաղցեայց, ընդ քեզ ինչ ոչ ասացից. զի իմ է աշխարհ լրիւ իւրով: 13 * Ոչ ուտեմ ես

զմիս զուարակաց քոց · և ոչ զարիւն նոխազաց քոց ըմպեմ ։ 14 *Մատո Այ պատարագ՝ զօրհնութիւն. կատարեա՛ բարձրելոյն զուխտս քո ։ 15 *Կարդասցես առ իս յաւուր նեղութեան քոյ՝ ես փրկեցից զքեզ. և դու փառաւոր արասցես զիս ։ 16 *Բայց մեղաւորին ասէ Ած. իսկ դու ընդէ՞ր ընթեռնուս պատմես զարդարութիւն իմ. կամ առնուս զուխտս իմ 'ի բերան քո ։ 17 *Զի դու ատեցեր զխրատ իմ. մերժեցեր, և յետս ընկեցեր զամ բանս բերանոյ իմոյ ։ 18 *Թէ տեսանէիր զգող՝ ընթանայիր ընդ նմա. և ընդ շունս դնէիր զբաժին քո ։ 19 *Բերան քո յաճախէր զչարութիւն. և լեզու քո նիւթէր զնենգութիւն ։ 20 *Նստեալ զեղբօրէ քումմէ չարախօսէիր. և 'ի վերայ որդւոյ մօր քոյ դնէիր զգայթագղութիւն ։ 21 *Զայս ամ արարեր՝ և լռեցի քեզ. կարծեցեր անօրէնդ 'ի մտի քում. թէ և ես քեզ նմանիցիմ ։ Արդ յանդիմանեցից՝ և կացուցից զայս ամ՝ առաջի քո ։ 22 *Իմացարո՛ւք ամենեքեան՝ որոց մոռացեալ իցէ զԱծ. Գուցէ երբեք յափշտակիցէք. և ոչ ոք իցէ՝ որ փրկիցէ ։ 23 *Պատարագ օրհնութեան փառաւոր արասցէ զիս. և անդ է ճանապարհ՝ ուր ցուցից նմա զփրկութիւն Այ ։

1 Ի կատարած, Սաղմոս Դաւթի ։
2 *Ի ժամանակի իբրև եկն առ նա Նաթան մարգարէ. յորժամ մտեալ էր նա առ Բերսաբէէ. Ծ ։

3 Ողորմեա՛ ինձ Ած ըստ մեծի ողորմութեան քում. ըստ բազում գթութեան քում՝ քաւեա՛ զանօրէնութիւն իմ ։ 4 *Առաւել լուա՛ զիս յանօրէնութենէ իմմէ. և 'ի մեղաց իմոց սուրբ արա զիս ։ 5 *Զանօրէնութիւն իմ ես ինքնին գիտեմ. և մեղք իմ առաջի իմ են յամ ժամ ։ 6 *Քեզ միայն մեղայ Տր. և զչարիս իմ առաջի քո արարի ։ Որպէս արդար եղիցիս 'ի բանս քո. և յաղթեսցես 'ի դատել քում ։ 7 *Անօրէնութեամբ յղացայ. և 'ի մեղս ծնաւ զիս մայր իմ ։ 8 *Դու Տր՝ զճշմարտութիւն սիրեցեր. զանյայտս՝ և զծածկեալս իմաստութեան քոյ ցուցեր ինձ ։ 9 *Ցօղեա՛ յիս մշտկաւ. և սուրբ եղէց. լուա՛, և քան զձիւն սպիտակ եղէց ։ 10 *Լսելի՛ արա ինձ զցնծութիւն և զուրախութիւն. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք ։ 11 *Դարձո՛ զերեսս քո 'ի մեղաց իմոց. և զամ անօրէնութիւնս իմ ջնջեա՛ յինէն ։ 12 *Զսիրտ սուրբ հաստատեա՛ յիս Ած. և զհոգի ուղիղ նորոգեա՛ 'ի փորի իմում ։ 13 *Մի՛ ընկենուր զիս Տր յերեսաց քոց. և զհոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն ։ 14 *Այլ տուր ինձ զցնծութիւն փրկութե քոյ. հոգւով պետութե քով հաստատեա՛ զիս ։ 15 *Ուսուցից անօրինաց զճանապարհս քո. և ամպարիշտք առ քեզ դարձցին ։ 16 *Փրկեա՛ զիս յարենէ Ած. Ած փրկութե իմոյ. ցնծասցէ լեզու իմ յարդարութե քում ։ 17 *Տէր եթէ զշրթունս իմ բանաս. բերան իմ պատմեսցէ զօրհնութիս քո ։ 18 *Թէ կամեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք. բայց դու ը ողջակէզս իսկ ոչ հաճեցար ։ 19 *Պատարագ Այ հոգի խոնարհ. զսիրտ սբ՝ և զհոգի խոնարհ Ած ոչ արհամարհէ ։ 20 *Բարի՛ արա Տր կամօք քովք սիոնի. և շինեսցին պարիսպք երուսաղէմի ։ 21 *Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութե. ուխտիւք պատարագս հանցեն 'ի սեղան քո զուարակս ։

1 Ի կատարած իմաստութեան Դաւթի ։
2 Ի ժամանակի զի եկն Դովեկ Եդովմայեցի և պատմեաց Սաւուղայ. և ասաց թէ Դաւիթ եկեալ է 'ի տուն Աքիմելէքայ ։ ԾԱ ։

3 Զի՞ պարծի 'ի չարութե. հզօրն յանօրէնութե ։ 4 *զօրհանապազ զանիրաւութիւն խորհեցաւ 'ի լեզուի իւրում ։ Որպէս զածելի սուր՝ սրեաց զնենգութիւն ։ 5 *սիրեաց զչարութիւն քան զբարութիւն. զանօրէնութիւն քան զխօսս արդարութե ։ 6 *Սիրեաց նա զամ խօսս կործանման. և զլեզուս նենգաւորս ։ 7 *Վասն այսորիկ Ած կործանեսցէ զնա իսպառ. խլեսցէ, և հանցէ զնա յարկաց իւրոց. և զարմատս նորա յերկրէն կենդանեաց ։ 8 *Տեսցեն արդարք՝ և երկիցեն. զնովաւ ծիծաղեսցին, և ասասցեն ։ 9 *Այս այր է. որ ոչ արար զԱծ իւր օգնական. այլ յուսացաւ սա 'ի բազում մեծութիւն իւր. և զօրացաւ 'ի նանրութե իւրում ։ 10 *Այլ ես որպէս ձիթենի պտղալից 'ի տան Այ. յուսացայ յողորմութիւն Այ յաւիտեան, և յաւիտեանս յաւիտենից ։ 11 *Խոստովան եղէց քեզ Տր յաւիտեան՝ զի արարեր. և համբերեցից անուան քում. զի քաղցր ես առաջի սրբոց քոց ։

1 Ի կատարած. վասն մաղէթայ իմաստութե էր Դաւթի ։ ԾԲ ։

Ասաց անզգամն 'ի սրտի իւրում. 2 թէ չիք Ած ։ *Ապականեցան և պղծեցան յանօրէնութե իւրեանց. և ոչ ոք է, որ առնէ զքաղցրութիւն ։ 3 *Ած յերկնից նայեցաւ յամենայն որդիս մարդկան տեսանել՝ թէ իցէ ոք իմաստուն, որ խնդրիցէ զԱծ ։

*Ամե_

Հռոմ. 3. 4.
Ղևտ. 14. 7.
Թուոց. 19. 4.
1 Թագ. 22. 9.
Սաղմ. 13. 1.
Սաղմ. 13. 2.

Հռոմ. 3.12.

4 *Ա՟մենեքեան խոտորեցան 'ի միասին. և անպիտանացան: Ոչ ոք է՝ որ առնէ զբարի. և չէ ոք՝ մինչև 'ի մի: 5 *Ոչ ծանիցեն ամենեքեան. որք գործեն զանօրէնութի՟: Որք ուտեն զժողովուրդ իմ՝ որպէս զկերակուր հացի: 6 *և առ Ա՟ծ ոչ կարդացին. Ա՟նդ երկիցեն երկիւղ. ուր ոչ իցէ երկիւղ. զի Ա՟ծ ցրուեսցէ զոսկերս մարդահաճոյից: Ա՟մաչեսցեն՝ և յամօթ լիցին. զի Ա՟ծ անարգեաց զնոսա: 7 *Ո՞ տացէ 'ի Սիոնէ զփրկութի՟ Իսրայէլի. 'ի դարձուցանել Տ՟ն զգերութի՟ ժողովրդեան իւրոյ. ցնծասցէ Յակոբ՝ և ուրախ եղիցի Իսրայէլ:

Ա Թագ. 23. 19. և 26.1.

1 'Ի կատարած. ընդ օրհնութիւնս իմաստութեան Դաւթի: 2 *Ի ժամանակի յորժամ եկին Զիփացիքն՝ և ասէին ցՍաւուղ՝ ահաւասիկ Դաւիթ թաքուցեալ կայ առ մեզ: ԾԳ:

3 ԱՍՏՈՒԱԾ յանուն քում կեցո զիս. և 'ի զօրութե՟ քում իրաւ արա ինձ: 4 *Ա՟ծ լուր աղօթից իմոց. ունկն դիր բանից բերանոյ իմոյ: 5 *Օտարք յարեան 'ի վերայ իմ. և հզօրք խնդրեցին զանձն իմ. և ոչ համարեցան զքեզ Ա՟ծ առաջի իւրեանց: 6 *Ա՟հա Ա՟ծ օգնական իմ. և Տ՟ր ընդունող հոգւոյ իմոյ: 7 *'Ի դարձուցանել զչարն 'ի թշնամիս իմ. ճշմարտութե՟բ քով սատակեա զնոսա: 8 *Ես կամօք իմովք պատարագ մատուցից քեզ. և խոստովան եղէց անուան քում Տ՟ր՝ զի բարի է: 9 *Յամ նեղութե՟ իմմէ փրկեցեր զիս. և 'ի թշնամիս իմ ետես ակն իմ:

1 'Ի կատարած ընդ օրհնութե՟ իմաստութե՟ Դաւթի: ԾԴ:

2 ՈՒՆԿՆ դիր Ա՟ծ աղօթից իմոց. և մի անտես առներ զխնդրուածս իմ: 3 *Նայեա՛ց առ իս և լուր ինձ. զի տրտմեցայ ես 'ի ձանձրանալ իմում. և խռովեցայ: 4 *'Ի ձայնէ թշնամւոյն՝ և 'ի նեղելոյ մեղաւորին: խոտորեցան յիս անօրէնութե՟բ. և բարկութե՟բ ոխս պահէին ինձ: 5 *Սիրտ իմ խռովեցաւ յիս. և երկիւղ մահու անկաւ 'ի վերայ իմ: 6 *Ա՟հ և դողումն եկն 'ի վերայ իմ. և ծածկեաց զիս խաւար: 7 *Ա՟սացի՝ տայր ոք ինձ զթևս որպէս աղաւնւոյ. զի թռչէի՝ վերանայի: 8 *հեռացեալ գագարէի յանապատի: 9 *Ա՟կն ունէի յԱ՟յ. որ փրկէր զիս 'ի կարճմտութե՟է զայրանալոյ՝ 'ի մրրկեալ նեղութե՟է: 10 *Ընկղմեա՛ Տ՟ր՝ և բաժանեա՛ զլեզուս ն՟ց. զի տեսի զանօրէնութի՟, և զհակառակութի՟ 'ի քաղաքի: 11 *'Ի տուէ և 'ի գիշերի շուրջ եղեն զպարսպօք ն՟ր անօրէնութի՟. չարիք, և մեղք են 'ի մէջ ն՟ց:

'ի տուն- ջեան

12 *և ոչ պակասեցաւ 'ի հրապարակաց ն՟ց 13 վաշխ՝ և նենգութիւն: *Զի թէ թշնամին նախատեալ էր. համբերէի արդեօք. կամ՝ ատելին մեծաբանեալ էր 'ի վերայ իմ. թաքչէի արդեօք 'ի նմանէ: 14 *Իսկ դու մարդ հաւասար իմ, առաջնորդ իմ, և ծանօթ իմ: 15 *Ո՟ր պաքէն 'ի նոյն քաղցրացուցեր ինձ և քեզ կերակուր. զի գնայաք միաբանութե՟բ 'ի տան Ա՟յ: 16 *Եկեսցէ մահ 'ի վերայ ն՟ց. և կենդանւոյն իջցեն 'ի դժոխս. զի չարութի՟ է 'ի բնակութե՟ ն՟ց և 'ի մէջ նոցա: 17 *Ես առ Ա՟ծ կարդացի՝ և Տ՟ր լուաւ ինձ: 18 *յերեկոյ՝ 'ի վաղորդեան՝ և 'ի հասարակ աւուր: Պատմեցի՝ և ասացի. և լուիցէ ձայնի իմում: 19 *փրկեսցէ խաղաղութե՟բ զանձն իմ՝ 'ի մերձաւորաց իմոց. զի կարեօք հասին 'ի վերայ իմ: 20 *Լուիցէ Ա՟ծ՝ և խոնարհ արասցէ զն՟ս. որ յառաջ է քան զյաւիտեանս: Զի ոչ գոյր նոցա փոխանակ. և ոչ երկեան յԱ՟յ: 21 *Ձգեաց զձեռն իւր հատուցանել նոցա՛ և նոքա 22 պղծեցին զօրէնս նորա: *Բաժանեցան 'ի սրտմտութե՟է երեսաց նորա. և էհաս 'ի սիրտս ն՟ց: Կակուղք են բանք նոցա քան զձէթ. և ինքեանք են նետք 23 սլաք: *Ընկեա՛ 'ի Տ՟ր զհոգս քո՝ և նա կերակրէ զքեզ. և ոչ տայ յաւիտեան 24 զսասանութի՟ արդարոյ: *Դու Ա՟ծ իջուսցես զնոսա 'ի գուբս ապականութե՟. արք արիւնահեղք՝ և նենգաւորք մի հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես 'ի քեզ Տ՟ր յուսացայ:

Մատ. 6.25. Ղուկ. 12. 22. 1. Պետ. 5. 7.

1 'Ի կատարած. վասն ժողովրդեանն. որ 'ի սրբութենէ հեռացեալ էին. Դաւթի արձանագիր. 'Ի ժամանակի յորժամ կալան զնա այլազգիքն 'ի Գէթ: ԾԵ:

Ա Թագ. 21. 11.



2 ՂՈՐՄԵԱՑ ԻՆՁ Ա՟Ծ. զի կոխեաց զիս մարդ՝ զօրհանապազ պատերազմունք նեղեցին զիս: 3 *Կոխեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ. բազումք էին, որք մարտնչէին ընդ իս 'ի բարձանց: 4 *'Ի տուէ ես ոչ երկեայց. զի 'ի Տ՟ր յուսացայ. աստուծով գովեցից զբանս իմ: 5 *յԱ՟ծ յուսացայ՝ և ոչ երկեայց, զի՞ արասցէ ինձ մարդ: 6 *Զօրհանապազ զբանս իմ անարգեցին. զինէն էին խորհուրդք նոցա 'ի չարութե՟: 7 *Պանդխտութք եղիցին՝ և թաքթաքուրք շրջեսցին. նոքա զարշապարս իմում սպասեսցեն՝ որպէս սպասէին

սէին անձին իմոյ: 8 *Որպէս առ յոչինչ մերժեսցես զնո՛. բարկութեամբ զժողովուրդս հնազանդեցուսցես: 9 *Ա՟Ծ զկեանս իմ պատմեցից քեզ. եդիր զարտասուս իմ առաջի քո. որպ՟ խոստացար դու ինձ: 10 *Դարձցին թշնամիք իմ յետս իւրեանց. յաւուր յորում կարդացից առ քեզ: Ահա ծանեայ՝ զի Ա՟Ծ իմ ես դու: 11 *զԱ՟Ծ օրհնեցից ՚ի բանս իմ. և զՏ՟ր գովեցից ՚ի խօսս իմ: յԱ՟Ծ յուսացայ, և ոչ երկեայց՝ զի՞ արասցէ ինձ մարդ: 12 *Յինէն են ուխտք իմ. զորս տաց քեզ օրհնութեամբ Ա՟Ծ իմ: 13 *Փրկեցեր զանձն իմ ՚ի մահուանէ՝ զաչս իմ յարտասուաց. և զոտս իմ ՚ի գայթագղութենէ. հաճոյ եղէց առաջի Տ՟ն յերկրին կենդանեաց:

1 Ի կատարած. մի՛ ապականեր. Դաւթի արձանագիր: ՚ի ժամանակի յորժամ փախուցեալ էր նա յերեսաց Սաւուղայ յայրն անդ: ԾԶ:

Ա Թագ 22.1: և 24.4.

Ողորմեա՛ ինձ Ա՟Ծ՝ ողորմեա՛ ինձ. 2 զի ՚ի քեզ յուսացաւ անձն իմ: Ի հովանի թևոց քոց յուսացայց. մինչև անցցէ անօրէնութիւն: 3 *Աղաղակեցից առ Ա՟Ծ բարձրեալն՝ առ Ա՟Ծ բարերար իմ: 4 *Առաքեաց յերկնից. և կեցոյց զիս, ետ ՚ի նախատինս՝ որք կոխեն զիս: Առաքեաց Ա՟Ծ զողորմութիւն և զճշմարտութիւն իւր. 5 *և փրկեաց զանձն իմ ՚ի միջոյ գազանաց. զի ննջէի ես խռովեալ: Որդւոց մարդկան. ատամունք իւրեանց զէն և նետք են. և լեզուք նոցա որպէս զսուր սուսեր: 6 *Բարձրեալ ես դու յերկինս Ա՟Ծ. և յամենայն երկրի են փառք քո: 7 *Որոգայթ պատրաստեցին ոտից իմոց. խոնարհ արարին զանձն իմ. փորեցին առաջի իմ զխորխորատ՝ և անկան ինքեանք ՚ի նոյն: 8 *Պատրաստ է սիրտ իմ Ա՟Ծ. պատրաստ է սիրտ իմ. օրհնեցից և սաղմոս ասացից քեզ: 9 *Զարթի՛ր փառք իմ. զարթի՛ր սաղմոսիւք և օրհնութեամբ. և ես զարթեայց առաւօտուց: 10 *Խոստովան եղէց քեզ ՚ի ժողովուրդս Տ՟ր. և սաղմոս ասացից քեզ յազգինս: 11 *Մեծ եղև մինչև յերկինս ողորմութիւն քո. մինչև յամպս ճշմարտութիւն քո: 12 *Բարձրեալ ես դու յերկինս Ա՟Ծ. յամենայն երկրի են փառք քո:

1 Ի կատարած մի՛ ապականեր. Դաւթի արձանագիր: ԾԷ:

Եթէ արդարև զարդարութիւն խօսէիք. 2 և ուղիղս դատէիք որդիք մարդկան: 3 *Քանզի՝ և արդ իսկ ՚ի սրտի ձերում զանօրէնութիւն գործէք. յերկրի զանիրաւութիւն ձեռք ձեր հիւսեն: 4 *Օտարք եղեն մեղաւորք ՚ի մօրէ. խաբեցան յարգանդէ. և խօսեցան զսուտ: 5 *Սրտմտութիւն նոցա բստնմանութեան օձի. որպէս իժի, և քարբի զի խցեալ է զականջս իւր: 6 *Զի մի՛ լուիցէ նա զձայն թովչի ճարտարի. և մի՛ առցէ զդեղ ՚ի դեղատուէ իմաստնոյ: 7 *Ա՟Ծ փշրեսցէ զատամունս նոցա ՚ի բերանս իւրեանց. և զծամիս առիւծուց խորտակեաց Տ՟ր: 8 *Անարգք եղիցին նոքա որպէս ջուր՝ զի հեղանի. ՚ի լարել աղեղան նոցա տկարասցին: 9 *որպէս մոմ զի հալի. և սպառեսցին: Անկաւ հուր. և ոչ տեսին զարև՝ 10 *մինչչև ՚ի միտ առեալ էր զփուշս իւրեանց. որպէս դժնիկ բարկութեամբ կենդանւոյն կլցցէ զնոսա: 11 *Ուրախ եղիցի արդարն՝ յորժամ տեսցէ զհատուցումն. և զձեռս իւր լուասցէ յարեան մեղաւորի: 12 *Եւ ասասցէ մարդ. թէ արդարև գուցէ պտուղ արդարոյն. և է Ա՟Ծ որ դատէ զնո՛ յերկրի:

1 Ի կատարած մի՛ ապականեր. Դաւթի արձանագիր: ՚ի ժամանակի յորժամ առաքեաց Սաւուղ և պահէին զտունն նորա. զի սպանցէ զնա: ԾԸ:

Ա Թագ 19.11.

2 Փրկեա՛ զիս ՚ի թշնամեաց իմոց Ա՟Ծ. յայնցանէ, որք յարուցեալք են 3 ՚ի վերայ իմ, ապրեցո՛ զիս: *Փրկեա՛ զիս յայնցանէ. ոյք գործեն զանօրէնութիւն. յարանց արիւնահեղաց ապրեցո՛ զիս: 4 *Որսալ զանձն իմ կամեցան. 5 և հասին ՚ի վերայ իմ հզօրք: *Ո՛չ մեղք իմ՝ և ոչ յանցանք. առանց մեղաց 6 ընթացայ՝ և ուղիղ եղէ: *Զարթի՛ր ընդ առաջ իմ, և տես դու՝ Տ՟ր զօրութեանց Ա՟Ծ Իսրայէլի. Նայեա՛ց՝ և այց արա ամենայն հեթանոսաց. մի՛ ողորմիր ամենեցուն. ոյք գործեն զանօրէնութիւն: 7 *Դարձցին ընդ երեկոյս. սովեսցին որպէս շունք. և շրջեսցին 8 զքաղաքաւ: *Նոքա ղօղանջեսցեն բերանոք իւրեանց. և սուր է ՚ի շրթունս նոցա: Իսկ արդ՝ ո՞վ լուաւ 9 զայս. *զի դու Տ՟ր ծիծաղեսցիս զնոքօք. արհամարհեսցես զամենայն հեթանոսս: 10 *Զզօրութիւն իմ առ քեզ պահեցից. զի Ա՟Ծ օգնական իմ է: 11 *Ա՟Ծ իմ. ողորմութիւն նո՛ր կանխեսցէ 12 առ իս: *Ա՟Ծ իմ ցոյց ինձ ՚ի թշնամիսն իմ: Մի՛ սպանաներ զնոսա՝ զի մի՛ մոռասցին զժողովուրդ քո: Ցրուեա՛ զնո՛ զօրութեամբ քով. և ընկճեա՛ զնոսա. զի դու ես պաշտպան իմ Տ՟ր: 13 *Մեղք բերանոյ նոցա՝ և բանք շրթանց

թանց նոցա. ընկլցին նոքա յանբար-
տաւանութեան իւրեանց։ Յանէծս՝ և
'ի ստութիւն մատնեսցին. *'ի կատարա 14
ծի բարկութեան սպառեսցին՝ և մի՛
գտցին։ Գիտասցեն, զի Ա՟ծ տիրէ յա
կոբայ՝ և ամենայն ծագաց երկրի։
*Դարձցին ընդ երեկոյս. սովեսցին 15
որպէս շունք. և շրջեսցին զքաղաքաւ։
*Նոքա սփռեսցին յուտել. ապա թէ 16
ոչ յագեսցին, տրտնջեսցեն։ *Ես 17
օրհնեցից զօրհնութիւն Տն. և ցնծա-
ցայց առաւօտուց յողորմութիւն նր։
*Զի եղեր իմ պաշտպան՝ և տուն ա- 18
պաւինի յաւուր նեղութեան իմոյ։
*Օգնական իմ քեզ սաղմոս ասացից՝ 19
Ա՟ծ ապաւէն իմ. Ա՟ծ ողորմութեան իմոյ։

Սաղմոս Դաւթի արձանագիր 'ի կատարած 1
փոխանորդելոց ժամանակաց առ ուսումն։
* Ի ժամանակի զի հրձիգ արար զՄիջագետս 2
Ասորւոց և զԱսորեստանն Սոբայ. և 'ի դար-
ձին հարկանէր յովաբ զեդովմայեցիս 'ի ձորն
աղից երկոտասան հազարս։ ԾԹ։

2 Թագ. 8. 1. և 10. 7. 1 Մնա. 18. 1.

Ա՟ծ մերժեցեր՝ և աւերեցեր զմեզ. 3
բարկացար՝ և գթացիր 'ի մեզ։
* Շարժեցեր զերկիր՝ և խռովեցու- 4
ցեր զնա. բժշկեա՛ զհարուածս նորա՝
զի սասանեցաւ։ *Ցուցեր ժողովր- 5
դեան քում զխստութիւն քո. և ետուր
մեզ ըմպել գինի յիմարութեան։
*Ետուր երկիւղածաց քոց նշան. զի 6
ապրեսցին յերեսաց աղեղան։ *Որպէս 7
փրկեսցին սիրելիք քո. կեցո՛ աջով քով՝
և լո՛ւր մեզ։ *Ա՟ծ խօսեցաւ 'ի սրբու- 8
թեան իւրում. ցնծացայց՝ բարձր եղէց՝
բաժանեցից զսիկեմ. և զհովիտս յար-
կաց չափեցից։ *Իմ է Գաղաադ. և 9
իմ է Մնասէ. Եփրեմ հզօրիչ գլխոյ
իմոյ։ Յուդա թագաւոր իմ։ *Մովաբ 10
աւազան յուսոյ իմոյ։ Յեդովմ ու-
ղեցից զգնացս իմ. և ինձ այլազգիք
հնազանդք եղեն։ *Ո՛ տարցէ զիս 'ի քա- 11
ղաք ամուր. կամ ո՛վ առաջնորդեսցէ
ինձ մինչև յեդովմ։ *Ոչ թէ ոչ դու 12
Ա՟ծ՝ որ մերժեցեր զմեզ. և ոչ ելեր
Ա՟ծ ընդ զօրս մեր։ *Տո՛ւր մեզ օգ- 13
նութիւն 'ի նեղութեան. զի ընդունայն է
փրկութիւն մարդոյ։ *Ա՟իւ արասցուք 14
զզօրութիւն. և նա արհամարհեսցէ
զայնոսիկ՝ որք նեղեն զմեզ։

Ի կատարած ընդ օրհնութիւնս. Սաղմոս 1
Դաւթի։ Կ։

Լո՛ւր Ա՟ծ աղօթից իմոց. և նայեա՛ց 2
յաղօթս իմ։ *Ի ծագաց երկրի 3
կարդացի առ քեզ. մինչ 'ի վհատակիլ
սրտի իմոյ։ Ի վէմ բարձր արարեր

4 զիս՝ առաջնորդեցեր ինձ։ *և իմ ե-
ղեր յոյս. աշտարակ հզօր եղեր յերե-
5 սաց թշնամւոյն։ *Բնակեցայց 'ի
յարկս քո յաւիտեան. և ծածկեցայց
6 ընդ հովանեաւ թևոց քոց։ *Դու
Ա՟ծ լուար աղօթից իմոց. ետուր զժա-
ռանգութիւն որք երկնչին յանուանէ
7 քումմէ։ *Աւուրս յաւուրս յաւելեր
թագաւորի. ամաց նր աւուրք յազ-
8 գաց մինչև յազգս նր։ *Կայ՝ և մնայ
յաւիտեան առաջի Ա՟յ ողորմութիւն
և ճշմարտութիւն. որք խնդրեսցեն 'ի
9 նմանէ։ *Այսպէս սաղմոս ասացից
անուան քում յաւիտեանս յաւիտենից.
և տաց քեզ զաղօթս իմ օրըստօրէ։

1 Ի կատարած 'ի վերայ Իդիթոնայ. Սաղմոս
Դաւթի։ ԿԱ։

2 Բայց միայն ա՟յ հնազանդ լեր անձն
իմ. զի 'ի նմանէ է ինձ փրկութիւն։
3 *Նա է Ա՟ծ իմ, և փրկիչ իմ, ապաւ-
էն իմ, զի մի՛ սասանեցայց առաւել։
4 *Մինչև յերբ յառնէք 'ի վ՟ր մարդոյ
սպանանել ամենեքեան. որպէս յոր-
մոյ թիւրելոյ՝ և 'ի ցանգոյ մերժելոյ։
5 *Բայց միայն զպատիւ իմ խորհեցան
մերժել յինէն. և ընթացան 'ի ծա-
րաւ իւրեանց։ Բերանովք իւրեանց
օրհնէին. և սրտիւք իւրեանց անիծա-
6 նէին։ *Բայց սակայն Ա՟յ հնազանդ
լեր անձն իմ. զի 'ի նմանէ է ինձ համ-
7 բերութիւն։ *Զի նա է Ա՟ծ իմ. և
փրկիչ իմ, ապաւէն իմ. զի մի՛ սասա-
8 նեցայց։ *Յա՟յ է զօրութիւն իմ, և փառք
իմ. Ա՟ծ օգնութեան իմոյ՝ յոյս իմ առ
9 Ա՟ծ է։ *Յուսացարո՛ւք 'ի նա ա՟մ ժո-
ղովք ժողովրդոց. սփռեցէ՛ք առաջի
նր զսիրտս ձեր. զի Ա՟ծ օգնական է
10 մեր յաւիտեանս ժամանակաց։ *Սա-
կայն ընդունայն են որդիք մարդկան.
սուտ են որդիք մարդկան. և 'ի կշիռս
իւրեանց մեղանչեն. և ինքեանք յու-
11 նայնութեան են 'ի միասին։ *Մի՛ յու-
սայք յանիրաւութիւն յափշտակութեան
մի՛ ցանկայք. մեծութիւն թէ առաւե՛լ
գայցէ մի՛ յօժարեսցին սիրտք ձեր։
12 *Միանգամ խօսեցաւ Ա՟ծ. և երկուս
13 զայս լուա՛յք։ Ա՟յ է զօրութիւն։ *և
քո Տր ողորմութիւն. ‖ և դու հատուցա- ‖ Մատ.
նես իւրաքանչիւր ըստ գործոց նոցա։ 16. 27.

1 Սաղմոս Դաւթի։ ‖ մինչդեռ էր նա յանապա- Հռոմ.
տին 'ի Հրէաստանի։ ԿԲ։ 2. 6.
1 Կորն.
2 Ա՟ծ Ա՟ծ իմ, ես առ քեզ առաւօտ 3. 8.
առնեմ. ծարաւեցաւ առ քեզ Գաղա.
հոգի իմ. քանի՛ պատիկ ես և մարմին իմ։ 6. 5.
3 *Յե՟ր երկիր անապատ և անջուր. ուր ‖ 1 Թագ.
ոչ գոյ 'ի նմա ճանապարհ։ Ա՟յ այսպէս 23. 14.
'ի սրբս

'ի սրբութեան երեւեցայց քեզ . տեսանել ինձ զզօրութիւն քո՛ և զփառս քո :
4 * Զի լաւ է ինձ ողորմութիւն քո քան զկեանս իմ. և շրթունք իմ գովեսցեն զքեզ : 5 * Այսպէս օրհնեցից զքեզ 'ի կեանս իմ. և յանուն քո համբարձից զձեռս իմ : 6 * Որպէս 'ի ճարպոյ պարարտութենէ լցցի անձն իմ. շրթամբք ցնծութեան օրհնեսցէ զքեզ բերան իմ : 7 * Եթէ յիշէի զքեզ յանկողնի իմում. ընդ առաւօտս կանխեալ խօսէի ընդ քեզ : 8 * Զի եղեր իմ օգնական . 'ի հովանի թեւոց քոց ցնծացայց : 9 * Եկն զկնի քո անձն իմ. և զիս ընկալաւ աջ քո : 10 * այլ նոքա ինանիր խնդրեցին զանձն իմ : Մտցեն 'ի ներքոյ անդնդոց երկրի . 11 * մատնեսցին 'ի ձեռս սրոյ. և բաժինք աղուեսուց եղիցին : 12 * Թագաւոր յուսասցի 'ի Տր, գովեսցին ամենեքեան, որք երդնուն նովաւ . խցցին բերանք այնոցիկ՛ որք խօսին զանօրէնութիւն :

1 'Ի կատարած Սաղմոս Դաւթի :
ԿԳ :

2 Լուր Տր աղօթից իմոց յաղաչել իմն առ քեզ . յերկիւղէ թշնամւոյն փրկեա զանձն իմ : 3 * Ծածկեսցես զիս 'ի ժողովոց չարաց . 'ի բազմութենէ, որք գործեն զանօրէնութիւն :
4 * Որք սրեցին որպէս սուսեր զլեզուս իւրեանց. լարեցին զաղեղունս իւրեանց յիրս դառնութեան : 5 * Ձգել 'ի գաղտնիս այնոցիկ՛ որք ուղիղ են սրտիւք. 6 * յանկարծակի ձգեսցեն 'ի նոսա՛ և ոչ երկիցեն : Զօրացուցին յանձինս իւրեանց զբանս չարութեան . խորհեցան թաքուցանել ինձ զորոգայթ . և ասացին՛ ոչ տեսանէ զայս Տր : 7 * Քննեցին զանօրէնութիւն . պարտասեցան 'ի քննել ըզ քննութիւն : 8 * Մատիցէ այր խորութեամբ սրտի իւրոյ : և բարձր եղիցի Ած : 9 * Նետք տղայոց եղեն վէրք նց . տկարացան 'ի նոսա լեզուք նց . և խռովեցան ամենեքեան՛ որք հայէին ընդ նս : 10 * Երկեաւ ամ մարդ 'ի պատմել զգործս Այ . և զարարածս ձեռաց նր 'ի միտ առին : 11 * Ուրախ եղիցի արդար 'ի Տր . և յուսասցի 'ի նա . նովաւ գովեսցին ամենեքեան՛ որք ուղիղ են սրտիւք :

1 'Ի կատարած Սաղմոս Դաւթի. երգ երեմիայի՛ և եզեկիէլի, և ժողովրդեանն՛ յորժամ 'ի պանդխտութենէ անտի կամէին ելանել : ԿԴ :

2 Քեզ վայելէ օրհնութի Ած 'ի սիոն . և քեզ տացին աղօթք յեմ : 3 * Լուր աղօթից իմոց . զի առ քեզ ամ մարմին եկեսցէ : 4 * Բանք անօրինաց զօրացան 'ի վր մեր . զամպարշտութիւն մեր դու քաւեսցես : 5 * Երանի՛ զոր ընտրեցեր՛ և ընկալար : և բնակեսցին 'ի դաւիթս քո : Լցցուք մեք 'ի բարութենէ տան քոյ . 6 սուրբ է տաճար քո * սքանչելի արդարութեամբ : Լուր մեզ Ած փրկիչ մեր . յոյս ամ ծագաց երկրի . և 7 որ 'ի ծով հեռի : * Պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով . և զգեցեալ է 8 զզօրութիւն : * Խռովեցուցանէ զմեծութիւն ծովու . և զձայն ալեաց նորա 9 յածուցանէ : * Խռովեսցին հեթանոսք . և երկիցեն բնակիչք երկրի 'ի նշանաց քոց : Ելս առաւօտու և 10 երեկոյս զուարճասցին : * Հայեցար յերկիր՛ արբեցուցեր զնա . և բազում արարեր զմեծութիւն նր : Գետն Այ լի եղև ջուրբ . պատրաստ արարեր զկերակուր նորա . զի այսպէս է պատ11 րաստութիւն : * Զակօս նորա արբեցուցեր՛ և բազում արարեր զարմտիս նորա : 'Ի ցօղել նորա զուարթ 12 եղիցի բոյս նորա : * օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քոյ : Դաշտք քո 13 լցցին պարարտութեամբ : * պարարտասցին գեղեցկութիւնք անապատի : 14 Բլուրք զցնծութիւն զգեցցին : * և զգեցցին խոյք մաքեաց : Հովիտք բազում արասցեն ցորեան . աղաղակեսցեն՛ և օրհնեսցեն :

1 'Ի կատարած Դաւթի Սաղմոս յարութեան :
ԿԵ :

2 Աղաղակեցէք առ Ած ամ երկիր . սաղմոս ասացէք անուան նորա՛ և տուք զփառս օրհնութեան նորա : 3 * Ասացէք Այ՛ որպէս զի ահեղ են գործք քո . 'ի բազում զօրութեան քում ստեցին 4 քեզ թշնամիք քո : * Ամենայն երկիր երկիր պագցեն քեզ . սաղմոս ասասցեն քեզ . սաղմոս ասասցեն անուան 5 քում : * Եկայք՛ և տեսէք զգործս Այ . որպէս զի ահեղ է խորհրդով քան զամ 6 որդւոց մարդկան : * Որ դարձոյց ըզ ծովն 'ի ցամաք . և ընդ գետս անցցեն ոտանաւորք : Անդ ուրախ եղիցուք 7 մեք 'ի նա : * որ տիրէ զօրութեամբ իւրով յաւիտենից : Աչք նր 'ի հեթանոսս հային . որք դառնացուցին զնա՛ մի բարձրասցին յանձինս իւրեանց : 8 * Օրհնեցէք հեթանոսք զԱծ մեր . լսելի՛ արարէք զձայն օրհնութեան նորա : 9 * Այն՛ որ ետ զանձն իմ 'ի կեանս . և 10 ոչ ետ զդողութիւն ոտից իմոց : * Փորձեցեր զմեզ Ած և քննեցեր . որպէս և քննի 11 արծաթ : * Իջուցեր զմեզ յորոգայթ՛ և եդեր զնեղութիւն 'ի թիկունս մեր : 12 * և անցուցեր զմարդիկ 'ի վր գլխոց մե-

մերոյ: Անցաք մեք ընդ հուր՝ և ընդ ջուր . և հաներ զմեզ 'ի հանգիստ :
*Մտից 'ի տուն քո պատարագօք. տաց 13
քեզ զուխտս իմ : * զոր խոստացան 14
քեզ շրթունք իմ. զոր բերան իմ խօսեցաւ 'ի նեղութեան : * Ողջակէզս 15
զուարակս մատուցից քեզ՝ խոյովք՝ և խնկովք . և քեզ մատուցից զուարակս՝ և նոխազս : * Եկայք լուարուք 16
ինձ . և պատմեցից ձեզ՝ ամենեքեան՝ որք երկնչիք յա̄յ . զոր ինչ արար անձին իմոյ : * Առ նա բերանով իմով 17
կարդացի . և բարձր արարի զնա լեզուաւ իմով : * Զմեղս թէ տեսանէի 18
'ի սրտի իմում . մի՛ լուիցէ ինձ Տ̄ր :
*Վասն այսորիկ լուաւ ա̄ծ . և նայեցաւ 'ի ձայն խնդրուածաց իմոց: 19
*Օրհնեալ է ա̄ծ՝ որ ոչ 'ի բաց արար 20
զաղօթս իմ . և ոչ զողորմութիւն իւր յինէն:

Ի կատարած ընդ օրհնութիւն Սաղմոս երգոյ: 1

## ԿԶ :

Ա̄Ծ մեր ողորմեսցի մեզ . և օրհնեսցէ 2
զմեզ . երևեցո զերեսս քո 'ի մեզ՝ և ողորմեսցի մեզ : * Ճանաչել յերկրի 3
զճանապարհս քո . յազգս ա̄մ զփրկութիւս քո : * Խոստովան եղիցին առ քեզ 4
ժողովուրդք ա̄ծ . խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ա̄մ : * Ուրախ 5
եղիցին՝ և ցնծասցեն ազինք . զի դու դատես զժողովուրդս յուղղութեան . և ազգաց երկրի դու առաջնորդես :
* Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ա̄ծ . խոստովան եղիցին առ 6
քեզ ժողովուրդք ա̄մ : * Երկիր ետ 7
զպտուղ իւր . և օրհնեսցէ զմեզ ա̄ծ՝ ա̄ծ մեր : * Ա̄Ծ մեր օրհնեսցէ զմեզ . զի 8
'ի նմանէ երկիցեն ա̄մ ծագք երկրի :

Ի կատարած . Դաւթի Սաղմոս երգոյ : 1

## ԿԷ :

Յարիցէ ա̄ծ՝ և ցրուեսցին ամենայն թշնամիք նո̄ր . փախիցեն ատեցողք նո̄ր յերեսաց նո̄ր : * Որ̄պ պակասի 2 3
ծուխ՝ պակասեսցին . որ̄պ հալի մոմ առաջի հրոյ՝ այնպէս կորիցեն մեղաւորք յերեսաց ա̄յ : * Արդարք ուրախ 4
եղիցին . և ցնծասցեն առաջի նո̄ր . և զուարճասցին յուրախութեան իւրեանց :
* Օրհնեցէք զա̄ծ՝ և սաղմոս ասացէք անուան նո̄ր . Ճանապարհ արարէք այնմիկ՝ որ նստի ընդ արևմուտս . Տ̄ր է անուն նորա : Ցնծասցեն առաջի նորա : և խռովեսցին յերեսաց նորա : 5
* Որ հայրն է որբոց՝ և դատաւոր այրեաց . ա̄ծ 'ի տեղւոջ սրբութեան իւրոյ : 6
* Ա̄Ծ բնակեցուցանէ զմիակրօնս 'ի 7
տան . և հանէ զկապեալս քաջութ̄բ իւրով . սոյնպէս և զդառնացօղս՝ որք բնակեալ են 'ի գերեզմանս :
8 * Ա̄Ծ ընդ ելանել քեզ առաջի ժողովրդեան քոյ . 'յանցանել քեզ յանա_
9 պատ : * երկիր շարժեցաւ : Քանզի և երկինք ցօղեցին յերեսաց Ա̄Յ 'ի
10 սինայէ՝ առաջի Ա̄Յ իղ̄ի : * Անձրև կամաց պատրաստեցեր Ա̄Ծ ժառանգութեան քում . թէպէտ և հիւանդացաւ՝ սակայն դու հաստատեցեր զնա :
11 * և գազանք քո բնակեսցին 'ի նմա : Պատրաստ արարեր քաղցրութ̄բ քով
12 աղքատի Ա̄Ծ : * Տ̄ր տացէ զբան . որք աւետարանեն զօրութ̄բ բազմաւ:
13 * Թագաւոր զօրութեանց սիրելոյ . գեղեցկութիւն տան քոյ բաժանել
14 յաւարի: * Թէպէտ և ննջեսջիք 'ի մէջ վիճակաց : Թևք աղաւնւոյ արծաթապատ . և թիկնամէջ նորա 'ի գոյն ոսկ
15 ւոյ : * 'Ի գումարել երկնաւորին զթագաւորս 'ի վերայ նորա . ձիւնասցին
16 'ի սեղմոն : * Լեառն Ա̄Յ լեառն պարարտ : լեառն մածեալ լեառն պա_
17 րարտ : * և զի՞նչ կարծէք լերինք հպարտացեալք: Լեառն ընդ որ հաճեցաւ Ա̄Ծ բնակել 'ի նմա . քանզի և Տ̄ր իսկ
18 բնակեսցի 'ի նմա իսպառ : * Կառք Ա̄Յ բիւրապատիկք՝ և հազար ուղղիչք : և Տ̄ր 'ի նոսա 'ի սինէ սրբութեան
19 իւրոյ : * Ել 'ի բարձունս՝ և գերեաց զգերութիւն . էառ աւար՝ բաշխեաց պարգևս՝ և ետ որդւոց մարդկան . քանզի թերահաւատից ևս բնակեալ եղիցին
20 'ի նմա : * Տ̄ր Ա̄Ծ օրհնեալ՝ օրհնեալ է Տ̄ր զօհանապազ . առաջնորդեսցէ
21 մեզ Ա̄Ծ փրկիչ մեր : * Ա̄Ծ մեր՝ Ա̄Ծ կենարար . և 'ի Տ̄է են ելք մահու :
22 * Բայց սակայն Ա̄Ծ փշրեսցէ զգլուխս թշնամեաց մերոց . և զհերոն կարճնովին՝ որք գնան յանօրէնութեան իւր̄ց :
23 * Ասաց Տ̄ր 'ի խորոց անդնդոց դարձուցից : և 'ի միջոյ ժանեաց զայն 'ի դուրս
24 կորզեցից: * Որ̄պ թացցի ոտն քո յարեան . և լեզուք շանց քոց յարենէ
25 թշնամեաց քոց : * Երևեցան գնացք քո Ա̄Ծ . գնացք Ա̄Յ՝ թագաւորին
26 մերոյ սրբոյ : * Կանխեցին իշխանք հանել զօրհնութիւն . 'ի մէջ կուսանաց՝
27 և գովչաց : * Յեկեղեցիս օրհնեցէք
28 զա̄ծ՝ և զՏ̄ր յաղբերացն իղ̄ի : * Անդ բենիամին 'ի տղայութեան զարմանալի . իշխանք յուդայ առաջնորդք նո̄ր . իշխանք զաբուղոնի . և իշխանք նեփ_
29 թաղիմի : * Հրամայեա ա̄ծ զօրութ̄բ քով . զօրացո զայս՝ զոր հաստատեցեր
30 'ի մեզ : * Ի տաճարէ քումմէ յէ̄մ . քեզ մատուցեն թագաւորք զպատարագս :

րագս։ * Սաստեա՛ 'ի գազանս եղեգանս. 'ի ժողովս զուարակաց՝ և 'ի գաւս երնջոց։ Խոտեսցին այնոքիկ՝ ոյք ընտրեալք են արծաթով. ցրուեա՛ զհեթանոսս՝ ոյք կամին ընդ պատերազմ։ * Եկեսցեն հրեշտակք յեգիպտոսէ. հնդիկք յառաջագոյն ձեռնտու լիցին առ ած։ * Թագաւորութիւնք երկրի օրհնեցէք զած. և սաղմոս ասացէք Տն։ Ճանապարհ արարէք այնմիկ. * որ նստի յերկինս երկնից՝ ընդ արևելս։ Ահա տացէ զձայն իւր՝ ձայն զօրութեան։ * Եւ տուք զփառս այ։ 'Ի վերայ իսլի մեծ վայելչութիւն նորա. զօրութիւն նորա մինչև յամպս երկնից։ * Սքանչելի է ած 'ի մէջ սրբոց իւրոց՝ ած իսրայէլի։ Նա տացէ զզօրութիւն հաստատութեան ժողովրդեան իւրոյ. օրհնեալ է ած։

'Ի կատարած Սաղմոս Դաւթի, վասն փոփոխելոց։ ԿԸ։

Կեցո՛ զիս ած՝ զի հասին ջուրք յանձն իմ. ընկլայ ես 'ի խորս անդնդոց՝ ուր ոչ գոյ ինձ հանգիստ։ * Եկի ես 'ի խորս ծովու. և շրջանք ընկլուզին զիս։ * Վաստակեցայ ես առ յաղաղակել. կերկերեցաւ կոկորդ իմ։ Նուաղեցան աչք իմ. առ յուսալ ինձ առ Տր ած իմ։ * Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ. ոյք ատեին զիս 'ի տարապարտուց։ Զօրացան յիս թշնամիք իմ, և ատեալք իմ նենգաւ. զոր ոչ յափշտակեալ էի՝ տուժէի նդ։ * Ած՝ դու ծանեար զանզգամութիւն իմ. և յանցանք իմ 'ի քէն ոչ ծածկեցան։ * Մի՛ ամաչեսցեն վասն իմ. ոյք համբերեն քեզ Տր՝ Տր զօրութեանց՝ մի՛ պատկառեսցին վն իմ. ոյք խնդրեն զքեզ ած իլի։ * Վասն քո համբերի նախատանաց՝ և ծածկեաց ամօթ զերեսս իմ։ * Օտար եղէ ես յեղբարց իմոց. և հիւր որդւոց մօր իմոյ։

‖ Յով. 2. 17. * ‖ Նախանձ տան քո եկեր զիս. նախատինք նախատչաց քոց անկան 'ի վր իմ։ * Խոնարհեցուցի պահօք զանձն իմ. ‖ և եղեն ինձ այս նախատինք։ ‖ Հռով. 15. 3.

* արարի զհանդերձս իմ քուրձ. և եղէ յառակ նոցա։ * Զինէն խորհէին. ոյք նստէին առ դրունս. և զիս այպն առնէին. ոյք ըմպէին զգինի։ * Ես յաղօթս կայի առ քեզ Տր, 'ի ժամանակ ընդունելի։ Ած 'ի բազում ողորմութեան քում լուր ինձ. 'ի ճշմարտութեան փրկութեան քոյ։ * Ապրեցո՛ զիս 'ի կաւոյ՝ զի մի՛ ընկլայց. ապրեցայց ես յատելեաց իմոց. և 'ի խորոց ջուրց բազմաց։ * Մի՛ ընկլուզին զիս պտոյտք ջուրց. և մի՛ ընկղմեսցեն զիս անդունդք խորոց. ջրհոր մի՛ կափուսցէ զբերան իւր 'ի վերայ իմ։ * Լո՛ւր ինձ Տր՝ զի քաղցր է ողորմութիւն քո. ըստ բազում գթութեան քում՝ հայեա՛ց յիս։ * Եւ մի՛ դարձուցաներ զերեսս քո 'ի ծառայէս քումմէ. զի նեղեալ եմ ես՝ վաղվաղակի լո՛ւր ինձ։ * Հայեա՛ց յանձն իմ, և փրկեա՛ զիս. և վն թշնամեաց իմոց ապրեցո՛ զիս։ * Զի դու գիտես զնախատինս իմ. զամօթ իմ. և զպատկառանս իմ։ * Առաջի քո են ամենայն նեղիչք անձին իմոյ. նախատանաց համբեր սիրտ իմ. և թշուառութեան։ Ակն ունէի՝ թէ ոք տրտմեսցի ընդ իս՝ և ոչո՛ք էր. և մխիթարիչ ինձ ոչ գտաւ։

* ‖ Ետուն 'ի կերակուր ինձ զլեղի. և 'ի ծարաւ իմ արբուցին ինձ զքացախ։ ‖ Մտ. 27. 48.

* ‖ Եղիցին սեղանք նց առաջի նոցա յորոգայթ. 'ի հատուցումն և 'ի գայթագղութիւն։ ‖ Հռով. 11. 9.

* Խաւարեսցին աչք նոցա՝ զի մի՛ տեսցեն. և զթիկունս նոցա հանապազ կորացո՛։ * Հեղցես 'ի վերայ նց զբարկութիւն քո. սրտմտութիւն բարկութեան քոյ հասցէ 'ի վերայ նոցա։

* ‖ Եղիցի բնակութիւն նոցա աւերակ. և 'ի յարկս նց մի՛ ոք իցէ, որ բնակիցէ։ ‖ Գործ. 1. 20.

* Զի զոր դու հարեր՝ հալածեցին. և 'ի վէրս ցաւոց իմոց յաւելին։ * Դի՛ր զմեղս 'ի վերայ մեղաց նոցա. զի մի՛ մտցեն յարդարութիւն քո։ * Ջնջեսցին նոքա 'ի դպրութենէ կենաց. և ընդ արդարս քո մի՛ գրեսցին։ * Աղքատ և ցաւած եմ ես. փրկութիւն քո ած ընկալցի զիս։ * Օրհնեցից զանուն Այ իմոյ օրհնութբ. և բարձր արարից զնա գոհութբ։ * Հաճոյ եղիցի այ քան զորթ մատաղ. որ բերէ զեղջիւրս և զկճղակս։ * Տեսցեն աղքատք՝ և ուրախ եղիցին. խնդրեցէք զած. և կեցցեն անձինք ձեր։ * Զի լուաւ Տր տնանկաց. և զկապեալս իւր ոչ արհամարհեաց։ * Օրհնեսցեն զնա երկինք և երկիր. ծով՝ և ամ որ զեռայ 'ի նոսա։ * Ած փրկէ զսիոն՝ և շինեսցին քաղաքք հրէաստանի. շինեսցեն՝ բնակեսցին և ժառանգեսցեն 'ի նմա։ * Զաւակ ծառայից քոց հաստատեսցի անդ. ոյք սիրեն զանուն քո. բնակեսցին 'ի նմա։

'Ի կատարած Սաղմոս Դաւթի։ առ 'ի յիշատակ փրկելոյն զնա Տն։ ԿԹ։

Ած յօգնել ինձ նայեա՛ց. և Տր յօ կերել ինձ փութա՛։ * Ամաչեսցեն՝ և յամօթ լիցին. ոյք խնդրեն զանձն իմ. դարձցին յետս, և ամաչեսցեն. ոյք խորհէին ինձ չար։

* Դարձ_

*Դարձցին առժամայն ամաչեցեալք. 4
որք ասէին ինձ վաշ վաշ: *Ցնծասցեն 5
և ուրախ լիցին 'ի քեզ ամենեքեան որք
խնդրեն զքեզ Տր: Ասասցեն յամե_
նայն ժամ, մեծ է ած. որք սիրեն զփր
կութիւս քո: *Ես աղքատ և տնանկ 6
եմ. ած օգնեա ինձ. օգնական և փր_
կիչ իմ ես դու. Տր մի յամենար:

Սաղմոս Դաւթի, որդւոցն յովնադաբայ. և 1
յառաջնոց գերութեան: Հ:

Ի քեզ Տր յուսացայ. մի ամաչեցից
յաւիտեան: *արդարութեամբ քով 2
փրկեա զիս. և ապրեցո զիս: Խոնար_
հեցո առ իս զունկն քո՝ և կեցո զիս:
*Եղեր իմ ած ապաւէն՝ և տեղի ամուր 3
կեցուցանել զիս. զի հաստատութի
իմ և ապաւէն իմ դու ես: *Ած իմ, 4
փրկեա զիս 'ի ձեռաց մեղաւորի՝ 'ի ձե
ռաց անօրինի և անիրաւի: *Դու ես 5
համբերութի իմ Տր՝ Տր յոյս իմ՝ 'ի
մանկութենէ իմմէ: *Ի քեզ հաստա_ 6
տեցայ ես յարգանդէ. յորովայնէ մօր
իմոյ դու ես ապաւէն իմ. և առ 'ի քէն
է օգնութիւն իմ յամ ժամ: *Որպ զի 7
նշանակ եղէ ես բազմաց. այլ դու
օգնական իմ և հզօրիչ իմ: *Լցցի բե 8
րան իմ գովութեամբ. որպէս օրհնեցից
զփառս քո. զօրհանապազ զմեծ վայ_
ելչութիւս քո: *Մի ընկենուր զիս Տր 9
'ի ժամանակս ծերութե. 'ի պակասիլ
զօրութե իմոյ մի թողուր զիս:
*Ասացին թշնամիք իմ ինձ. և որք 10
պաշարեցին զանձն իմ. խորհեցան 'ի
միասին: և ասացին. *ած եթող զնա՝ 11
հալածեցուք՝ և հասցուք նմա. զի ոչ
ոք է որ փրկէ զնա: *Ած իմ մի հե_ 12
ռի առնիր յինէն. և ած յօգնել ինձ
նայեաց: *Ամաչեսցեն՝ և պակասես_ 13
ցին. որք չարախօս կային զանձնէ իմ_
մէ. զգեցցին զամօթ և զպատկառանս.
որք խնդրէին ինձ զչար: *Ես յամ 14
ժամ յուսացայց. և յաւելից յօրհնու_
թիւս քո: *Բերան իմ պատմեսցէ զար 15
դարութիւս քո. զօրհանապազ զփրկու
թիւս քո: Որպ ոչ թէ խարդախութեամբ
ինչ գիտէի զդպրութի: *այլ մտից 16
'ի զօրութիւս Տն. Տր յիշեցի զարդա_
րութիւս քո միայն: *Ած իմ, ուսուցեր 17
զիս 'ի մանկութենէ իմմէ. և ցարդ ես
պատմեցից զարդարութիւս քո:
*Մինչև յալևորիլ՝ և 'ի ծերանալ՝ ած 18
իմ մի թողուր զիս. մինչև պատմե_
ցից զբազուկ քո ազգի ամի՝ որ գալոցն
է: Զզօրութիւս քո *և զարդարու_ 19
թիւս քո. մինչև 'ի բարձունս. զոր արա
րեր մեծամեծս. ած ո՞ նմանի քեզ:
*Որչափ ցուցեր ինձ զնեղութի բա_ 20
հէ

զում և չարչարանս՝ դարձար՝ մխիթա
րեցեր զիս. և 'ի խորոց անդնդոց երկ_
21 րի հաներ զիս: *Յաձախեցեր զզօրու
թիւս քո. դարձար՝ մխիթարեցեր զիս.
և 'ի խորոց երկրի միւսանգամ հաներ
22 զիս: *Արդ՝ և ես խոստովան եղէց
քեզ 'ի պատրաստութի սաղմոսաց.
Ճշմարիտդ ած. սաղմոս ասացից քեզ
23 օրհնութե. սրբդ Իէլի: *Ցնծասցեն
շրթունք իմ, յորժամ սաղմոս ասիցեն
քեզ. և անձն իմ, զոր փրկեցեր:
24 *Նաև լեզու իմ զօրհանապազ խօ_
սեսցի զարդարութիւս քո: 'Ի ժամա_
նակի իբրև յամօթ լիցին. ամաչես_
ցեն. որք խնդրէին ինձ չար:

1 'Ի Սողոմոն. Սաղմոս Դաւթի:
ՀԱ:

2 ԱԾ զիրաւունս քո արքայի տուր.
զարդարութիւս քո որդւոյ թա_
գաւորի: Դատել զժողովուրդս քո ար
դարութե. և զաղքատս քո իրաւամբք:
3 *Առցեն լերինք զխաղաղութի ժողո
վրդեան. և բլուրք զարդարութի:
4 *Իրաւ արասցէ աղքատաց ժողովր_
դեան. և կեցուսցէ զորդիս տնանկաց.
և խոնարհեցուսցէ զամբաստանս:
5 *Կացցէ՝ և մնասցէ ընդ արև. յա_
ռաջ քան զլուսին. յազգէ մինչև յազգ:
6 *Իջցէ որպէս զանձրև 'ի վերայ գեղ
մման. որպէս զցօղ զի ցօղէ յերկիր:
7 *Ծագեսցի յաւուրս նր արդարու_
թի՝ բազում խաղաղութի՝ մինչև կա_
8 տարեսցի լուսին: *Տիրեսցէ նա 'ի ծո
վէ մինչև 'ի ծով. 'ի գետոց մինչև 'ի
9 ծագս աշխարհի: *Առաջի նորա նախ
հնդիկք անկցին. և թշնամիք նր զհող
10 կերիցեն: *Թագաւորք Թարսիս՝ և
կղզեաց պատարագս մատուսցեն նմա.
թագաւորք արաբաց և սաբայ. պատա
11 րագս բերցեն նմա: *Երկիր պագցեն
նմա ամ թագաւորք երկրի. ամենայն
12 ազգք ծառայեսցեն նմա: *Զի փր_
կեաց զաղքատն 'ի ձեռաց հզօրի. զաղ
քատն և զտնանկն՝ որոյ ոչ է օգնական:
13 *Խնայեսցէ նա յաղքատն և 'ի տնան
կըն. և զանձինս տնանկաց կեցուսցէ:
14 *'Ի վաշխից և 'ի չարաց փրկեսցէ զան
ձինս նց: Պատուական է անուն նորա
15 առաջի նոցա: *կեցցէ՝ և տացի նմա
յոսկւոյն արաբացւոց: Յաղօթս կաց
ցեն առ նա յամ ժամ. և զօր հանա_
16 պազ օրհնեսցեն զնա: *Եղիցի հաս_
տատութի ընդ ամ երկիր. և 'ի վերայ
գլխոց լերանց: Բարձրասցի քան զլի
բանան պտուղ նորա. ծաղկեսցի 'ի
քաղաքի Տն որպէս զխոտ երկրի:
17 *Եղիցի անուն Տն օրհնեալ յաւի_
տեան.

տեսանս. զի յառաջ քան զարեւ է անուն նր։ Նովաւ օրհնեսցին ամենայն ազգք երկրի. եւ ամ ազինք երանիտցեն նմա։
18 *Օրհնեալ ՏրԱծ Իսրայէլի՝ որ առնէ զսքանչելիս միայն։ 19 *եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց նորա յաւիտեանս. եւ լցցի փառօք նր ամ երկիր. եղիցի եղիցի։ 20 *Պակասեցան օրհնութիւնք 'ի Դաւթէ յորդւոյ Յեսսեայ։

Սաղմոս Ասափայ։ ՀԲ։ 1

ՈՐՊԷՍ ԲԱՐԻ Է իսրայէլի Ած. ուղղոց են սրտիւք։ 2 *Բայց զի իմ փոքր մի եւ սասանեալ էին ոտք. սակաւիկ մի գայթագղեալ էին գնացք իմ։ 3 *Նախանձեցայ ես ընդ անօրէնս զխաղաղութիւն մեղաւորաց. որպ տեսանէի։ 4 *զի ոչ գոյր վրէպ մահու նոցա։ Հաստատունք էին տանջանք նոցա։ 5 *'ի վաստակս մարդկան չէին նոքա. եւ ընդ մարդկան ոչ տանջեսցին։ 6 *Վն այսորիկ կալաւ զնոսա ամբարտաւանութիւն [նոցա], արկին զիւրեամբք զամբարշտութիւն. եւ զանիրաւութիւն իւրեանց։ 7 *Ելցեն որպ 'ի ճարպոյ անիրաւութիւնք նոցա. զի գնացին նոքա ընդ խորհրդոց սրտից իւրեանց։ 8 *Խորհեցան՝ եւ խօսեցան չարութբ. եւ զապիրատութիւն 'ի բարձունս խորհեցան։ 9 *Եդին յերկինս զբերանս իւրեանց. եւ զլեզուս իւրեանց ածէին զերկրաւ։
10 *Վն այսորիկ դարձցի ժողովուրդ իմ այսրէն. եւ աւուրք իմ լի կատարեալ գտցին 'ի նոսա։ 11 *Ասացին՝ թէ զիարդ գիտաց Ած. կամ գուցէ գիտութիւն առ 'ի բարձրելոյն։ 12 *Ահա մեղաւորք են՝ եւ յաջողեալ է նոցա. կան՝ եւ ունին զմեծութիւն աշխարհի։ 13 *Ասացի՝ զուր ուրեմն արդարացուցի զսիրտ իմ. լուացի սրբութբ զձեռս իմ։ 14 *եւ եղէ ես խոշտանգեալ զօրհանապազ. եւ կշտամբանք իմ ընդ առաւօտս։ 15 *Թէպէտ եւ ասէի՝ թէ այսպէս պատմեցից. ահաւասիկ ազգ որդւոյ քոյ՝ որոց ուխտեցի։ 16 *Դիմի եդի , թէ սակայն եւ այս ջան է առաջի իմ։ 17 *մինչեւ մտից 'ի սրբութի Տն. եւ 'ի միտ առից զկատարած նոցա։ 18 *Սակայն վասն նենգութեան նոցա տարագիր արարես զնս. կործանեցես զնս յամբարտաւանութե իւրեց։ 19 *Իսկ զիարդ եղեն աւեր՝ յանկարծակի սատակեցան. պակասեցան՝ կորեան վասն անօրէնութե իւրեանց։ 20 *եւ եղեն որպէս երազք զարթուցելոց։ Տէր, 'ի քաղաքի քում զպատկերս նոցա անարգեսցես։
21 *զի հուր բորբոքեցաւ 'ի սրտի իմում, եւ երիկամունք իմ այլագունեցան։
22 *Ես արհամարհեալ եղէ՝ եւ ոչ գիտացի. 23 *որպէս զանասուն համարեցայ առաջի քո. եւ ես յամ ժամ ընդ քեզ եմ։ 24 *Կալար զաջոյ ձեռանէ իմմէ. 'ի խորհուրդս քո առաջնորդեցեր ինձ. 25 եւ փառօք ընկալար զիս։ *Զի՞նչ կայ իմ բնաւ յերկինս. կամ 'ի քէն զինչ 26 ես խնդրեցից յերկրի։ *Նուաղեցաւ սիրտ իմ, եւ մարմին իմ. Ած սրտի իմոյ. 27 բաժին իմ Ած յաւիտեան։ *Ահաւասիկ ոյք հեռի արարին զանձինս իւրեանց 'ի քէն , կորիցեն. սատակեցեր զամենեսեան. որք ապստամբք եղեն 28 'ի քէն։ *Ինձ մերձենալ առ Ած բարի է. եւ դնել առ Տր զյոյս իմ։ Պատմել զամենայն օրհնութիւնս քո. 'ի դրունս դստեր սիոնի։

1 Իմաստութի Ասափայ։ ՀԳ։

Ընդէ՞ր մերժեցեր Ած իսպառ. բարկացաւ սրտմտութի քո 'ի վերայ 2 խաշին արօտի քոյ։ *Յիշեա՛ զժողովուրդ քո. զոր ստացար 'ի սկզբանէ. փրկեցեր զվիճակ ժառանգութե քոյ։ Լեառն սիոն այս՝ ուր բնակեցար դու 3 'ի նմա. *համբարձ զձեռն քո 'ի վերայ ամբարտաւանութե նոցա իսպառ։ Որինչ անիրաւեցաւ թշնամին 'ի սրբու-4 թե քում. *պարծեցան ատելիք քո 'ի մէջ բարեկենդանութեան իւրեանց։ 5 *Եդին զնշանս իւրեանց 'ի նշանս. եւ ինքեանք ոչ ծանեան զելս 'ի վերուստ։ 6 Որպէս յանտառի փայտատօք *կոտորեցին զդրունս նորա. 'ի միասին փայտատօք եւ մրճօք կործանեցին զնա։
7 *Այրեցին 'ի հուր զսրբութիւն քո յերկրի. պղծեցին զխորան անուան 8 քոյ։ *Ասացին 'ի սիրտս իւրեանց ազգք նր 'ի միասին. եկայք՝ լռեցուսցուք զամ տօնս Այ յերկրէ։ 9 *Նշանս մեք ինչ ոչ տեսաք. եւ ոչ եւս գուցէ մարգարէ. եւ զմեզ ինչ ոք ոչ ճանաչիցէ։ 10 *Մինչեւ յե՞րբ Ած, նախատէ թշնամին. բարկացուցանէ հակառակորդն զանուն սուրբ քո։ 11 *Ընդէ՞ր դարձուցանես զձեռն քո. եւ զաջ քո 'ի 12 միջոյ ծոցոյ քումմէ իսպառ։ *Ած թագաւոր մեր՝ յառաջ քան զյաւիտեանս. որ արարեր զփրկութի 'ի մէջ 13 երկրի։ *Դու հաստատեցեր զօրութբ քով զծով. դու խորտակեցեր ըզգլուխ վիշապին 'ի վերայ ջուրց։ 14 *Դու փշրեցեր զգլուխ վիշապին. եւ ետուր զնա կերակուր զօրացն հնդկաց։

4 Թագ 25. 9

1. 68.

կաց: 15 *Դու բղխեցուցեր զաղբիւրս և զվտակս. դու ցամաքեցուցեր ըզգետս սաստիկս: 16 *Քո է տիւ. և քո է գիշեր. դու զլոյս և զարև դու հաստատեցեր: 17 *Եւ դու հաստատեցեր զամ սահմանս երկրի. զգարուն և զամառն դու ստեղծեր: 18 *Յիշեա զայս. յուշ լիցի քեզ՝ զի թշնամին նախատեաց զՏէր. ժողովուրդ անզգամ բարկացոյց զանուն քո: 19 *Մի մատներ գազանաց զանձն, որ խոստովան առնի առ քեզ. և զանձինս տնանկաց քոց մի մոռանար իսպառ: 20 *Հայեաց յուխտ քո. զի լցան տունք աւերելոց յերկրի անիրաւութեամբ: 21 *Մի դարձցի տնանկն ամաչեցեալ. աղքատք՝ և տնանկք օրհնեսցեն զանուն քո: 22 *Արի Ած և դատեա զդատաստանս քո. յիշեա զնախատինս՝ որ յանզգամէն զօրհանապազ: 23 *Մի մոռանար զձայն պաշտօնէից քոց. ամբարտաւանութիւն ատելեաց քոց վերասցի հանապազ:

1 Ի կատարած՝ Մ՛ ապականեր. Սաղմոս օրհնութեան Ասափու: ՀԴ:

2 Խոստովան եղիցուք առ քեզ Ած. խոստովան եղիցուք՝ և կարդասցուք զանուն քո: Պատմեցից զամենայն սքանչելիս քո: 3 *յորժամ ժամ առից՝ ես ուղիղ դատեցայց: 4 *Մաշեցաւ երկիր՝ և ամ բնակիչք նր. ես հաստատեցի զսիւնս նորա: 5 *Ասացի անօրինաց՝ թէ մի անօրինիք. և մեղաւորաց՝ թէ մի բարձրացուցանէք զեղջիւրս ձեր: 6 *Մի համբառնայք ՚ի բարձունս զեղջիւրս ձեր. և մի խօսիք զԱծ անիրաւութիւն: 7 *Զի ոչ յարևելից՝ և ոչ յարևմտից՝ և ոչ յանապատէ լերանց: այլ Ած դատաւոր է: 8 *Զայս խոնարհ առնէ՝ և զայն բարձրացուցանէ: 9 *բաժակ ՚ի ձեռին Տն գինի լի անապակ արկեալ. և խոնարհեցոյց յայսմանէ յայս. Սակայն՝ մրուր նորա ոչ սպառեսցի. և արբցեն զնա ամ մեղաւորք երկրի: 10 *Ես ցնծացայց յաւիտեան. սաղմոս ասացից Այ յակոբայ: 11 *Զամ եղջիւրս մեղաւորաց փշրեսցես. և բարձր եղիցի եղջիւր արդարոյ:

1 Ի կատարած ընդ օրհնութիւն, Սաղմոս Ասափու. երգ առ Ասորեստանեայսն: ՀԵ:

2 Յայտնի է ՚ի Հրէաստանի Ած. և յիսրայէլ մեծ է անուն նր: 3 *Եղև ՚ի խաղաղութեան տեղի նորա. և բնակութիւն նորա ՚ի սիոն: 4 *Անդ խորտակեաց Տր զզօրութիւն աղեղանց՝ զզէն՝ զսուր՝ և զպատերազմ: 5 *Լուսաւոր ես

Հէ 2

դու սքանչելապէս լերանցն յաւիտենից: 6 *խռովեսցին ամենեքեան՝ որք անմիտք են սրտիւք. ննջեցին զքունս իւրեանց. և ինչ ոչ գտին: Ամենայն արք՝ ՚ի մեծութեան ձեռաց իւրեանց: 7 *՚ի սաստէ քումմէ Ած յակոբայ ննջեցին. 8 որք հեծեալ էին ՚ի ձիս: *Դու ահաւոր ես՝ և ով կարէ կալ առաջի 9 քո. *որպէս երևեցար դու յերկնից: յայտնի եղև բարկութիւն քո: Երկիր 10 երկեաւ՝ և սարսեաց: *ընդ յառնել Այ ՚ի դատաստան. ընդ ապրեցուցանել զամենայն հեզս երկրի: (սարսեցաւ)

11 *Խորհուրդք մարդկան խոստովան առնիցին առ քեզ. և ծածկեալք իմաս12տութեան օրհնեսցեն զքեզ: *Ուխտս դիք՝ և կատարեցէք Տն Այ մերոյ ամենեքեան՝ որք շուրջ էք զնովաւ: Մատուցէք պատարագս ահա13ւորին: *որ քաղէ զոգիս իշխանաց. ահաւոր է նա քան զամենայն թագաւորս երկրի:

1 Ի կատարած վասն իդիթոմայ Սաղմոս Ասափու: ՀԶ:

2 Ձայնիւ իմով ես առ Տր կարդացի. ձայնիւ իմով առ Ած. և նայեցաւ 3 առ իս: *Յաւուր նեղութեան իմոյ զԱծ խնդրեցի ձեռօք իմովք. և ՚ի գիշերի առաջի նորա ոչ խաբեցայ: Ոչ կամէր 4 մխիթարել անձն իմ. *յիշեցի զԱծ և ուրախ եղէ. հոգացի, և նուաղեաց յիս 5 հոգի իմ: *Կանխեցին պահուց աչք 6 իմ. խռովեցայ՝ և ոչ խօսեցայ. *խորհեցայ զաւուրսն զառաջինս. և զամսն 7 յաւիտենից յիշեցի: *Խօսեցայ ՚ի գիշերի ընդ սրտի իմում. հոգացի՝ և տա8ռապեցաւ յիս հոգի իմ: *Մի թէ յաւիտենից մերժեսցէ զիս Տր. և ոչ ևս 9 յաւելցի ՚ի հաճիլ և ևս: *Կամ իսպառ արգելցէ զողորմութիւն իւր յինէն. կամ կատարեաց զբանն իւր յազգէ մինչև 10 յազգ: *Կամ մոռասցի գթալ Ած իմ և ևս. կամ արգելցէ զգթութիւն 11 իւր բարկութեամբ իւրով: *Ասացի՝ այժմ սկսայ. այս է նորոգումն աջոյ բարձ12րելոյն: *Յիշեցի զգործս Տն. ՚ի սկզբա13նէ յիշեցի զսքանչելիս նր: *Խորհեցայ յամ գործս քո. և ՚ի ձեռագործս 14 քո խորհեցայ: *Ած ՚ի սրբութեան են ճանապարհք քո. ով է Ած մեծ որպէս 15 զԱծ մեր: *դու ես Ած՝ որ առնես զսքանչելիս: Յուցեր ժողովրդեան 16 քում զզօրութիւն քո: *փրկեցեր բազկաւ քով զժողովուրդս քո. զորդիսն 17 յակոբայ և յովսեփու: *Տեսին զքեզ ջուրք Ած. տեսին զքեզ ջուրք՝ և եր18կեան. խորք խռովեցան. *՚ի ձայնէ

ջուրց բազմաց։ Ձայն ետուն ամպք. քանզի և նետք քո գնան։ * 19 Ձայն որոտալոյ քոյ յանուռն։ Նշուլեցան փայլատակունք քո տիեզերաց. խռովեցաւ, և դողաց երկիր։ * 20 'Ի ծովու են ճանապարհք քո. և շաւիղք քո 'ի ջուրս բազումս. և հետք քո ոչ երևին։ * 21 Առաջնորդեցեր ոպ̃ խաշին ժողովրդեան քոյ 'ի ձեռն Մովսէսի և Ահարոնի։

Ելից. 14.19.

Իմաստութիւն Ասափայ։ ՀԷ։ 1

Հայեցարուք ժողովուրդք իմ յօրէնս իմ. խոնարհեցուցէք զունկն ձեր 'ի բանս բերանոյ իմոյ։ * 2 Բացից առակաւ զբերան իմ, խօսեցայց զառակս 'ի սկզբանէ։ * 3 Որ լուաք՝ և ծանեաք զայս. և հարք մեր պատմեցին մեզ։ * 4 Ոչինչ ծածկեցաւ յորդւոց նց̃ յազգ յայլ. պատմել զօրհնութիւս Տն̃ զզօրութի̃ և զսքանչելիս իւր. զորս արար։ * 5 Հաստատեաց զվկայութիւն իւր առ յակոբ. և զօրէնս եդ 'ի վերայ Իղի։ Որինչ միանգամ պատուիրեաց հարցն մերոց. ցուցանել զայս որդւոց իւրեանց. * 6 զի ծանիցէ ազգ այլ։ Որդիք՝ որք ծնանին. յարիցեն՝ և պատմեսցեն զայս որդւոց իւրեանց. * 7 զի դիցեն առ Ած̃ զյոյս իւրեանց. և մի մոռասցին զգործս Այ̃. Զպատուիրանս նորա խնդրելով խնդրեսցեն։ * 8 և մի եղիցին ոպ̃ և հարք իւրեանց. Ազգ չար, և դառնացօղ. ազգ՝ որ ոչ ուղղեաց զսիրտ իւր. և ոչ հաստատեաց առ Ած̃ զհոգի իւր։ * 9 Որդիք եփրեմի լարձիգք՝ և պնդաձիգք. յաւուր պատերազմի կապարճս դարձուցին։ * 10 Ոչ կացին նոքա յուխտի Տն̃. և ըստ օրինաց նորա ոչ կամեցան գնալ։ * 11 Մոռացան զերախտիս նր̃. և զսքանչելիս նորա՝ զորս եցոյց նց̃։ * 12 Առաջի հարցն նոցա արար զսքանչելիս իւր. յերկրին եգիպտացւոց՝ և 'ի դաշտին տայանու։ * 13 Հերձ զծովն՝ և անցոյց զնոսա. և կացոյց զջուրս ոպ̃ 'ի տիկս։ * 14 Առաջնորդեաց նց̃ ամպով 'ի տուէ. և զամ̃ գիշեր 'ի լոյս հրոյ։ * 15 Հերձ զվէմս յանապատին. և ետ ըմպել նց̃ ոպ̃ 'ի խորոց մեծէ։ * 16 Հան զջուրս 'ի վիմէ. և հոսեաց ոպ̃ զգետս զջուրս։ * 17 Սակայն յաւելին 'ի մեղանչել՝ և ևս բարկացուցին զբարձրեալն յանջրդի։ * 18 Փորձեցին զԱծ̃ 'ի սիրտս իւրեանց. 'ի խնդրել զկերակուր անձանց իւրոց։ * 19 Տրտնջեցին զԱծ̃՝ և ասացին. միթէ կարօղ իցէ Ած̃ պատրաստել զսեղան յանապատի։ * 20 Քանզի հարկանէր զվէմ՝ և հոսէին ջուրք. և վտակք խաղային 'ի նմանէ։ Ա՛զէ հաց ևս կարասցէ տալ նա մեզ. կամ պատրաստեսցէ զսեղան ժողովրդեան իւրոյ։

Ելից. 14.21. Ելից. 13.21. Սաղմ. 104.39. Սաղմ. 104.41. Ելից. 17.6. Սաղմ. 48.5. Մատ. 13.35.

21 * Վասն այսորիկ լուաւ զայս Տր̃ և յապաղեաց. հուր բորբոքեցաւ 'ի յակոբ. և բարկութի̃ ել 'ի վերայ Իղի։ 22 * Զի ոչ հաւատացին յԱծ̃. և ոչ 23 յուսացան 'ի փրկութի̃ նր̃։ * Հրամանս ետ ամպոց 'ի վերուստ՝ և զդրունս 24 երկնից եբաց։ * և տեղեաց 'ի նոսա զմանանայ 'ի կերակուր։ Զհաց երկնից ետ նց̃։ 25 * զհաց հրեշտակաց կերին մարդիկք. և իջոյց 'ի նս̃ զկերակուր 'ի լիութի̃։ 26 * Հան զհողմն հարաւոյ. և էած զօրութբ̃ իւրով զհիւսիսին։ 27 * Տեղեաց 'ի նս̃ միս որպէս զհող. որպէս զաւազ ծովու զթռչունս 28 թևաւորս։ * Արկ 'ի մէջ բանակի նոցա. և շուրջ զվրանօք նոցա։ 29 * Կերին՝ և յագեցան յոյժ. և զցան30կութի̃ նոցա ետ նոցա։ * և ոչինչ կարօտք եղեն 'ի ցանկութէ̃ իւրեանց։ Մինչդեռ կերակուրք 'ի բերանս 31 իւրեանց էին։ * բարկութի̃ Այ̃ ել 'ի վր̃ նց̃։ Սպան զբազումս 'ի նոցանէ. և զընտիր ընտիրս Իղի սատակեաց։ 32 * Յայսմ ամ̃ի մեղան՝ և ևս. և ոչ հաւա33տացին սքանչելեաց նորա։ * Պակասեցան յունայնութե̃ աւուրք նոցա. և ամք նոցա փութապէս անցին։ 34 * Յորժամ սպանանէր զնս̃, խնդրէին զնա. դառնային՝ և առաւօտ առնէին 35 առ Ած̃։ * Յիշեցին՝ զի Ած̃ օգնական էր նց̃. Ած̃ բարձրեալ փրկիչ էր նց̃։ 36 * Սիրեցին զնա բերանովք իւրեանց. 37 և լեզուօք իւրեանց ստեցին նմա։ * և սիրտք նց̃ ոչ էին ուղիղք ընդ նմա և 38 ոչ հաւատացին ուխտի նր̃։ * Այլ նա ինքն գթած էր՝ քաւէր զմեղս նց̃. և ոչ ապականէր։ Յաճախէր դարձուցանել զբարկութի̃ իւր. և ոչ բորբոքէր զամ̃ սրտմտութի̃ իւր։ 39 * Յիշեաց թէ մարմին են նոքա. հոգի՝ որ ելանէ՝ և այլ ոչ դառնայ։ 40 * Քանիցս անգամ դառնացուցին զնա յանապատի. բարկացուցին զբարձ41րեալն յանջրդի։ * Դարձան՝ և փորձեցին զԱծ̃. և զսր̃բն Իղի զայրացուցին։ 42 * Ոչ յիշեցին զձեռն նր̃. յաւուր յորում փրկեաց զնս̃ 'ի ձեռաց նեղչաց 43 նոցա։ * Որպէս արար զնշանս՝ և զարուեստս իւր յերկրին եգիպտացւոց՝ 44 և 'ի դաշտին տայանու։ * Դարձոյց յարիւն զգետս նց̃. և զանձրևս նոցա 45 զի մի արբցեն։ * Առաքեաց 'ի նոսա զշանաճանճ՝ և եկեր զնս̃. և գորտիկ 46 ապականեաց զնս̃։ * Ետ ժանկոյ զպտուղս նց̃. և զվաստակ նոցա մա47րախոյ։ * Հար կարկտիւ զայգիս նոցա.

Թուոց 11.2. Ելից 16.4. Թուոց 11.7. Յով. 6.31. 1. Կոր. 10.3. Թուոց 11.31. Թուոց 11.33. Ելից 7.20. Ելից 8.6. և 24. Ելից 10.15. Ելից 9.32.

նոցա. և զթզենիս նց եղեմամբ։
48 * Մատնեաց 'ի կարկուտ զանասունս նց՝ և զստացուածս նց հրոյ դատեցաւ։
49 * Առաքեաց 'ի նս զսրտմտութիւն բարկութե իւրոյ. զսրտմտութիւն զբարկութիւն. և զնեղութիւն։ Առաքեաց 'ի նս առնչանս 'ի ձեռն հրեշտակի չարի։
50 * Դիմեցոյց 'ի նոսա զսրտմտութիւն բարկութե իւրոյ։ Ոչ անխայեաց 'ի մահուանէ զանձինս նց՝ և զանասունս նց 'ի մահ մատնեաց։
51 *‖ Եհար զամ անդրանիկս եգիպտացւոց. զսկիզբն ամ վաստակոց նոցա՝ 'ի յարկս քամայ։
52 *‖ Հորդան ետ ոպ խաշինս ժողովրդեան իւրոյ. և էհան զնս ոպ զհօտ յանապատ։
53 *‖ Առաջնորդեաց նց յուսով և ոչ երկեան. և ըզթշնամիս նոցա ծով ծածկեաց։
54 * Եհան զնս 'ի լեառն սրբութե իւրոյ՝ 'ի լեառն այն, զոր ստացաւ աջ նր։
‖ Մերժեաց յերեսաց նոցա զհեթանոսս. վիճակեցոյց 'ի նոսա զվիճակ ժառանգութե իւրոյ.
55 * և բնակեցոյց 'ի յարկս նոցա զազգն իէլի։
56 * Փորձեցին՝ դառնացուցին զԱծ բարձրեալ. և զվկայութիւն նր ոչ պահեցին։
57 * Դարձեալ խոտորեցան ոպ և հարք իւրեանց. դարձան՝ և եղեն ոպ զաղեղն թիւր։
58 * Դարձեալ բարկացուցին զնա 'ի բագինս իւրեանց. և դրօշելովք իւրեանց նախանձ արկին նմա։
59 * Լուաւ Ած՝ և արհամարհեաց զնս. և անարգեաց յոյժ զիէլ։
60 ‖ * Մերժեաց յիւրմէ զխորանն 'ի սելով. խորանն՝ զոր բնակեցոյց 'ի մէջ մարդկան։
61 * Մատնեաց 'ի գերութիւն զզօրութիւն նոցա. և զգեղ նց 'ի ձեռս թշնամեաց նոցա։
62 * Արգել 'ի սուր զժողովուրդ իւր. և զժառանգութիւն իւր անտես արար։
63 * Զերիտասարդս նոցա եկեր հուր. և վամն կուսանաց նոցա ոչք սգացաւ։
64 * Քահանայք նոցա անկան 'ի սուր. և զայրիս նց ոչք էր՝ որ լայր։
65 * Զարթեաւ ոպ 'ի քնոյ Տր. ոպ զհզօր զի թափէ զգինի։
66 * Եհար յետս զթշնամիս իւր. նախատինս յաւիտենից արար զնոսա։
67 * Մերժեաց նա զխորանն յովսեփու. և զազգն եփրեմի նա ոչ ընտրեաց։
68 * Այլ ընտրեաց նա զազգն յուդայ. զլեառն սիոն, զոր և սիրեաց։
69 * Շինեաց ոպ զմիեղջերու զսրբութիւն նր. յերկրի հաստատեաց զնա յաւիտեան։
70 *‖ Ընտրեաց զդաւիթ ծառայ իւր. և ընկալաւ զնա 'ի հօտէ խաշանց. 'ի վերջին ծնելոցն ընկալաւ զնա։
71 *‖ Հովուել զյակոբ ծառայ իւր. և զիէլ ժառանգութիւն իւր։
72 * Արածէր զնս իմաստութբ սրտի իւրոյ. յանմեղութիւն ձեռաց իւրոց առաջնորդէր նոցա։

‖ Ելից. 12.29. ‖ Ելից. 13.18. ‖ Ելից. 14.27. ‖ Յեսու. 13.7. ‖ Ա Թագ. 4.3. Երեմ. 7.12. և 26.6. ‖ Ա Թագ. 16.11. ‖ Բ Թագ. 7.8.

1 Սաղմոս օրհնութեան Ասափայ։ ՀԸ։

Աստուածք մտին հեթանոսք 'ի ժառանգութիւն քո. պղծեցին զտաճար սբ քո։ Արարին զերմ որպէս
2 զհիւղս մրգապահաց * արկին զդիակունս ծառայից քոց դէշ թռչնոց երկնից. և զմարմինս սրբոց քոց գազանաց երկրի։
3 * Հեղին զարիւն նոցա ոպ զջուր շուրջ զերմաւ. և ոչք էր՝ որ թաղէր։
4 * Եղեաք մեք նախատինք դրացեաց մերոց. ծաղր՝ և այպն կատականաց այնոցիկ՝ ոյք շուրջ էին զմեօք։
5 * Մինչև յերբ Տր բարկանաս դու իսպառ. բորբոքեսցի ոպ զհուր նախանձ քո։
6 *‖ Հեղ զբարկութիւն քո 'ի վր ազգաց՝ որք զքեզ ոչ ճանաչեցին. 'ի վր թագաւորաց՝ որք զանուն քո ոչ կարդացին։
7 * Զի կերին զյակոբ՝ և զտեղի նր աւերեցին։
8 *‖ Մի յիշեր զմեղս մեր զառաջինս. վաղվաղ եկեսցէ առ մեզ ողորմութիւն քո Տր. զի աղքատացաք յոյժ։
9 * Օգնեա՛ մեզ Ած փրկիչ մեր. վասն փառաց անուան քոյ։ Տր փրկեա՛ զմեզ՝ և քաւեա՛ զմեղս մեր, վն անուան քոյ։
10 * Մի երբէք ասասցեն 'ի հեթանոսս. թէ ուր է Ած նոցա։ Այլ յայտնի լիցի 'ի վր հեթանոսաց առաջի աչաց մերոց. առ 'ի խնդրել զվրէժ արեան ծառայից քոց՝ որ հեղաւ։
11 * Մտցէ առաջի քո հեծութիւն կապելոց. ըստ մեծութե բազկի քոյ շահեա՛ դու զորդիս սպանանելոց։
12 * Հատո՛ դրացեաց մերոց եօթնպատիկ 'ի ծոցս նոցա՝ նախատինս իւրեանց.
13 զոր նախատեցին զքեզ Տէր։ * Մեք ժողովուրդք՝ և խաշն արօտի քոյ. խոստովան եղիցուք առ քեզ յաւիտեան. յազգէ յազգ պատմեսցուք զօրհնութիւնս քո։

‖ Երեմ. 10.25. ‖ Եսայ. 64.9.

1 Ի կատարած 'ի վերայ փոփոխելոցն վկայութիւն Ասափայ. Սաղմոս 'ի վերայ ասորեստանւոյ։ ՀԹ։

2 Որ հովուես զիէլ՝ նայեա՛ց. որ առաջնորդես որպէս խաշին զյովսէփ։ Որ
3 նստիս 'ի քրովբէս յայտնեա՛ց. * առաջի եփրեմի՝ բենիամինի՝ և մանասէի։ Զարթո՛ զզօրութիւն քո՝ և եկ 'ի կեցուցանել զմեզ։
4 * Ած զօրութեց դարձո՛ զմեզ. երևեցո՛ զերեսս քո 'ի մեզ՝
5 և կեցցուք։ * Տր Ած զօրութեց. մինչև յերբ բարկանաս յաղօթս ծառայից
6 քոց։ * Ջամբեսցես մեզ զհաց արտասուաց. և արբուցեր մեզ արտասուս
7 չափով։ * Արարեր զմեզ նախատինս դրա_

դրացեաց մերոց. այպն կատականաց թշնամեաց մերոց: 8 *Ա.Ծ զօրութեց դարձո զմեզ. երեւեցո զերեսս քո 'ի մեզ՝ և կեցցուք: 9 *Որթ յեգիպտոսէ փոխեցեր. հաներ զհեթանոսս՝ և զնա տնկեցեր: 10 *Եւ առաջնորդեցեր նմա: Հաստատեցեր զարմատս նորա և ելից զերկիր: 11 *Ծածկեաց զլերինս հովանի նորա. բարունակ նր զմայրս Ա.Յ: 12 *Ձգեաց զորթ իւր մինչև 'ի ծով. մինչև 'ի գետս են շառաւիղք նորա: 13 *Ընդէր քակեցեր զցանգ նր. կթեն զնա անցաւորք ճանապարհի: 14 *Ապականեաց զնա խոզ անտառի՝ և էրէ վայրի արածեցաւ 'ի նմա: 15 *Ա.Ծ զօրութեց, դարձ՝ հայեաց յերկնից, և տես. այց արա այգւոյս այսմիկ: 16 *զարմոն տար սմա. զոր տնկեաց աջ քո: 'Ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօ_րացուցեր զնա 'ի քեզ: 17 *այրեցեալ 'ի հուր՝ և աւերեալ. և 'ի սաստէ քում մէ կորիցէ: 18 *Եղիցի ձեռն քո 'ի վերայ առն. աջ քո 'ի վերայ որդւոյ մարդոյ՝ զոր զօրացուցեր զնա 'ի քեզ: 19 *Ոչ ևս 'ի բացէ եղիցուք մեք 'ի քէն. կեցուսցես դու զմեզ. և զանուն քո Տր կարդասցուք: 20 *Ա.Ծ զօրութեց դարձո զմեզ. երևեցո զերեսս քո 'ի մեզ. և կեցցուք:

1 'Ի կատարած վասն հնձանացն Սաղմոս Ասափայ: Ձ:

2 Ցնծացէք առ Ա.Ծ օգնական է մեր. աղաղակեցէք առ Ա.Ծ յակոբայ: 3 *Առէք սաղմոս՝ և տուք օրհնութի. սաղմոս ասացէք նմա 'ի ձայն քաղցրութե: 4 *Փող հարէք 'ի գլուխս ամսոց. յաւուր նշանաւորի տարեկանաց մե_րոց: 5 *Հրաման է այս յիլի. և իրաւունք են Ա.Յ յակոբայ: 6 *‖Վկայութի յօսեփու՝ զոր եդ ընդ նմա. որպէս ելանէր նա յերկրէն եգիպտացւոց: Լեզու՝ զոր ոչ գիտէր, լուաւ: 7 *'Ի բաց արար 'ի բեռանց զթիկունս նորա. և զձեռս նր յորթ և 'ի թի ծառայելոյ: 8 *'Ի նեղութե կարդացեր առ իս՝ և փրկեցի զքեզ. լուայ քեզ 'ի գաղտնութե մրրկի. ‖և փորձեցի զքեզ 'ի վր ջուրցն հակառակութե: 9 *Լուր ժողովուրդ իմ, և վկայեմ քեզ. Ի իէլ թէ լուիցես ինձ: 10 *‖Մի ևս եղիցին քեզ աստուածք առժամայինք. և մի երկիր պագանիցես դու աստուծոյ օտարի: 11 *Ես եմ Տր Ա.Ծ քո. որ հանի զքեզ յերկրէն եգիպտացւոց. բաց զբերան քո՝ և լցից զդա: 12 *Ժողովուրդ իմ ոչ լուաւ ձայնի իմում. և իէլ յիս ինչ ոչ նայեցաւ: 13 *‖Արձակի թողի զնոսա

‖Ծննդ. 41.25.
‖Ելից. 17. 6.
‖Ելից. 20.3.
‖Գործ. 14.15.

երթալ զհետ կամաց սրտից իւրեանց. զի գնասցեն նոքա ըստ կամս անձանց իւրեանց: 14 *‖Եթէ ժողովուրդ իմ լուեալ էր ինձ. կամ իէլ զճանա_պարհս իմ գնացեալ էր: 15 *Որպէս զոչ ինչ խոնարհ արարեալ էր իմ զթշնամիս նր. և 'ի վր նեղչաց նորա արկեալ էր զձեռն իմ: 16 *Թշնամիք Տն ստեցին նմա. և եղիցին ժամանակք նց յաւիտեան: 17 *Կերակրեաց զնոսա 'ի պարար_տութէ ցորենոյ. 'ի վիմէ մեղր յա_գեցոյց զնոսա:

‖Երեմ. 3.13.

1 Սաղմոս Ասափայ: ՁԱ:

Աստուած եկաց 'ի ժողովս աստուծոց. և 'ի միջի նց դատէր զնոսա: 2 *Մինչև յերբ դատէք անիրաւու_թի. և ակն առնուք մեղաւորաց: 3 *Դատ արարէք որբոյ՝ և այրւոյ. իրաւունս արարէք տնանկի՝ և խոնարհի: 4 *‖Ապրեցուցէք զաղքատն՝ և զտնանկն. 'ի ձեռաց մեղաւորի փրկեցէք զնոսա: 5 *Ոչ իմացան՝ և ոչ 'ի միտ առին. 'ի խաւարի գնացին՝ և շարժեցան ամ հիմունք երկրի: 6 *‖Ես ասացի՝ թէ աստուածք իցէք. կամ որդիք բարձրելոյ ամենեքեան: 7 *Դուք աւադիկ որպ զմարդիկ մեռանիք. որպէս զմի յիշխանաց անկանիք: 8 *Արի Ա.Ծ և դատեա զերկիր. զի դու ժառանգեսցես զամ հեթանոսս:

‖Ա.Թագ. 24. 11.
‖Յովհ. 10. 34.

1 Սաղմոս օրհնութե Ասափայ: ՁԲ:

2 Աստուած, ո՞ քեզ նմանիցի. մի լռեր՝ և մի դադարիր Ած: 3 *Զի ահա թշնամիք քո գոչեցին. և ատելիք քո համբարձին զգլուխս իւրեանց: 4 *'Ի վր ժողովրդեան քոյ խորամանկեցին զգի_տութի. խորհեցան 'ի վր սրբոց քոց. և ասացին: 5 *Եկայք սատակեսցուք զնոսա յազգաց. և մի յիշեսցի անուն իէլի ևս: 6 *Խորհեցան միաբանու_թե 'ի միասին. վասն քո ուխտ արա_րին: 7 *Բնակք եդովմայեցւոց՝ և իսմայէլացիք. մովաբ՝ և հագարացիք: 8 *Գեբաղ՝ ամոն. ամաղէկ. այլազգիքն ամ բնակչօքն հանդերձ ծուրայ: 9 *Նա և ասուր եկեալ էր ընդ նոսա. ամենեքեան սոքա օգնականք եղեն որդ_ւոցն ղովտայ: 10 *‖Արա զնոսա որպէս զմադիամ, ‖որպ զսիսարայ. որպ զաբին 'ի ծործորս կիսոնի: 11 *Սատակեցան նոքա յականս դորա. և եղեն որպէս զաղբ երկրի: 12 ‖*Արա զիշխանս նց որպ զորէբն. և զզեբն. և զզեբեէ՝ և զսաղ_մանայ. և զամ իշխանս նց: 13 *Որք ասացին ժառանգեսցուք 'ի մեզ զսր_բութիւն Ա.Յ: 14 *Ա.Ծ իմ արա զնս որպ զա_

‖Դատ. 7.22.
‖Դատ. 4.15. և 24.
‖Դատ. 7.25. և 8.21.

զանիւ․ որ զեղէգն առաջի հողմոյ։ 15 *Որպէս զհուր՝ զի այրէ զանտառս․ որպէս զբոց՝ զի կիզու զլերինս։ 16 *Նոյնպէս հալածեսցես զնոսա մրրկաւ քով․ և բարկութեամբ քով խռովեսցուսցես զնոսա։ 17 *Լից զերեսս նոցա անարգանօք․ և խնդրեսցեն զանուն քո Տր։ 18 *Ամաչեսցեն՝ և խռովեսցին յաւիտեանս յաւիտենից․ և ամօթալից կորիցեն։ 19 *Ծանիցեն՝ զի անուն քո Տր է․ և դու միայն բարձրեալ ես ՚ի վերայ ամենայն երկրի։

1 Ի կատարած վասն հնձանաց․ Սաղմոս որդւոցն Կորխայ։ ՁԳ։

2 Իբրև զի սիրելի են յարկք քո Տր զօրութեանց։ 3 *ցանկայ․ և փափագի անձն իմ ՚ի գաւիթս քո։ Սիրտ իմ, և մարմին իմ ցնծացեն առ Ա՟ծ կենդանի։ 4 *Քանզի ճնճղուկ եգիտ իւր տուն․ և տատրակ զբոյն․ ուր դիցէ զձագս իւր։ Սեղան քո Տր զօրութեանց․ թագաւոր իմ, և Ա՟ծ իմ։ 5 *Երանի ամենեցուն․ որք բնակեալ են ՚ի տան Տն․ յաւիտեանս յաւիտենից օրհնեսցեն զքեզ։ 6 *Երանեալ է այր՝ որոյ օգնութիւն ՚ի քէն է․ ելս եդ ՚ի միտս իւրում 7 *՚ի հովիտս արտասուաց ՚ի տեղւոջ յորում ուխտեաց։ 8 *Օրհնութիւնս տացէ․ որ զօրէնս դնէ։ գնասցէ նա ՚ի զօրութենէ ՚ի զօրութիւն․ և երևեսցի Ա՟ծ հրեշտակաց ՚ի սիօն։ 9 *Տր Ա՟ծ զօրութեանց՝ լուր աղօթից իմոց, ունկն դիր Ա՟ծ յակոբայ։ 10 *Պաշտպան ես դու մեր՝ տես Ա՟ծ և նայեաց յերեսս օծելոյ քո։ 11 *Զի լաւ է ինձ մի օր ՚ի գաւիթս քո․ քան զհազար։ Ընտրեցի ընդ աղբ կալ ՚ի տան Ա՟յ․ առաւել քան զբնականալ ՚ի յարկս մեղաւորաց։ 12 *Զողորմութիւն և զճշմարտութիւն սիրէ Տր Ա՟ծ մեր․ շնորհս և փառս տացէ։ 13 *Տր ոչ պակաս առնէ զողորմութիւն իւր յայնցանէ՝ ոյք գնան յանմեղութեան։ Տր Ա՟ծ զօրութեանց․ երանեալ է այր՝ որ յուսայ ՚ի քեզ։

1 Ի կատարած․ որդւոցն Կորխայ Սաղմոս։ ՁԴ։

2 Հաճեցար Տր ընդ երկիր քո․ և դարձուցեր զգերութիւն յակոբայ։ 3 *Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քոյ․ ծածկեցեր զամենայն զմեղս նոցա։ 4 *Լռեցուցեր զամենայն սրտմտութիւնս քո․ դարձար ՚ի բարկութենէ սրտմտութեան քոյ։ 5 *Դարձ առ մեզ Ա՟ծ փրկիչ մեր․ և դարձո զսրտմտութիւնս քո ՚ի մէնջ։ 6 *Մի՛ յաւիտեան բարկանար մեզ․ և մի՛ ձգեր զբարկութիւն քո յազգէ մինչև յազգ։ 7 *Ա՟ծ դու դարձեալ կեցուսցես զմեզ․ ժողովուրդ քո ուրախ եղիցի ՚ի քեզ։ 8 *Ցո՛յց մեզ Տր զողորմութիւնս քո․ և զփրկութիւնս քո տո՛ւր մեզ։ 9 *Լուայց զինչ խօսի Տր Ա՟ծ մեր․ խօսեսցի զխաղաղութիւն ժողովրդեան իւրոյ․ առ սուրբս իւր․ և առ այնոսիկ՝ ոյք դարձեալ են առ նա սրտիւք։ 10 *Սակայն մերձ է առ երկիւղածս իւր փրկութիւն նորա․ բնակել փառաց նորա յերկրի մերում։ 11 *Ողորմութիւն և ճշմարտութիւն պատահեսցին․ արդարութիւն և խաղաղութիւն համբուրեսցին։ 12 *Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ․ արդարութիւն յերկնից երևեցաւ։ 13 *Տր տացէ զքաղցրութիւն՝ և երկիր մեր տացէ զպտուղ իւր։ 14 *արդարութիւն առաջի նորա գնասցէ․ դիցէ ՚ի ճանապարհի զգնացս իւր։

Աղօթք Դաւթի ՚ի կատարած որդւոցն Կորխայ․ ՁԵ։

1 Խոնարհեցո՛ Տր զունկն քո․ և լո՛ւր ինձ․ զի աղքատ, և տնանկ եմ ես։ 2 *Պահեա՛ զանձն իմ․ զի սուրբ եմ․ փրկեա՛ զծառայս քո Ա՟ծ իմ․ որ ՚ի քեզ յուսացայ։ 3 *Ողորմեա՛ց ինձ Տէր՝ զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ։ 4 *ուրախ արա զանձն ծառայի քոյ՝ զի առ քեզ Տր համբարձի զանձն իմ։ 5 *‖ Զի դու Տր՝ քաղցր՝ և ուղիղ ես․ բազումողորմ՝ առ ամենեսեան՝ որք կարդան առ քեզ։ 6 *Ունկն դիր Տր աղօթից իմոց․ և նայեա՛ց ՚ի ձայն խնդրուածաց իմոց։ 7 *Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ՝ և լուա՛ր ինձ։ 8 *Ոչ ո՛ք է նման քեզ յաստուածս Տէր․ և ոչ ո՛ք է որպէս զգործս քո։ 9 *Զամենայն ազգս՝ զորս արարեր՝ եկեսցեն՝ և երկիրպագեսցեն առաջի քո Տր․ փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։ 10 *Մեծ ես դու Տր․ և առնես սքանչելիս․ և դու միայն ես Ա՟ծ։ 11 *Առաջնորդեա՛ ինձ ՚ի ճանապարհի քում․ և գնացից ՚ի ճշմարտութեան քում․ և ուրախ եղիցի սիրտ իմ երկնչել յանուանէ քումմէ։ 12 *Խոստովան եղէց առ քեզ Տր Ա՟ծ իմ․ բոլորով սրտիւ իմով փառաւոր արարից զանուն քո յաւիտեան։ 13 *Մեծ եղև ՚ի վերայ իմ ողորմութիւն քո․ փրկեցեր զանձն իմ ՚ի դժոխոց ներքնոց։ 14 *Ա՟ծ, անօրէնք յարեան ՚ի վերայ իմ․ և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ․ և ո՛չ համարեցան զքեզ Ա՟ծ առաջի իւրեանց։ 15 *Այլ դու Տր Ա՟ծ իմ, գթած ես․ և ողորմած՝ երկայնամիտ՝ բազումողորմ․ և ճշմարիտ։ 16 *նայեա՛ց առ իս՝ և ողորմեա՛ց ինձ։ Տո՛ւր զօրութիւն ծառայի

‖ Յովէլ. 2. 13.

ռայի քոյ․ կեցո՛ զորդի աղախնոյ քոյ։ 17 *Եւ արա՛ առ իս նշան բարութեան։ Տեսցեն ատելիք իմ, եւ ամաչեսցեն․ զի դու Տէր օգնեցեր ինձ՝ եւ մխիթարեցեր զիս։

1 Որդւոցն Կորխայ, Սաղմոս օրհնութեան։

## ՁԶ։

Հիմունք նորա՝ ի լերանց սուրբս նր․ 2 *սիրէ Տէր զդրունս սիոնի՝ քան զամենայն յարկսն յակոբայ։ 3 *Փառաւորեալ խօսեցաւ վասն քո․ ահաւադիկ քաղաքդ Այ։ 4 *Յիշեցի զռահաբ եւ զբաբիլոն՝ ոյք ճանաչեն զիս․ ահա այլազգիք՝ ծուր՝ ժողովուրդք հնդկաց՝ սոքա եղեն անդ։ 5 *Մայր սիոնի ասէ մարդ՝ եւ մարդ ծնաւ՝ ի նմա․ եւ ինքն հիմունս եարկ նմա բարձրեալն։ 6 *Տէր պատմեսցէ գրովք ժողովրդեան, իշխանացս այսոցիկ՝ ոյք եղեն անդ։ 7 *Որպէս զի ուրախ լիցին՝ ի քեզ ամենեքեան․ որոց բնակութիւն՝ ի քեզ է։

1 Օրհնութիւն սաղմոսի որդւոցն կորխայ․ ՝ի կատարած վասն մահելէթայ․ զի եւ պատասխանի՝ իմաստութիւն եմմանայ եզրայեցւոյ։

## ՁԷ։

ՏԷՐ ԱԾ փրկութեան իմոյ․ ՝ի տուէ կարդացի՝ եւ գիշերի առաջի քոյ։ 3 *Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր․ խոնարհեսցի ունկն քո ՝ի խնդրուածս իմ։ 4 *Զի լցաւ չարչարանօք անձն իմ․ եւ կեանք իմ ՝ի դժոխս մերձեցան։ 5 *Եւ համարեցայ ես ընդ այնոսիկ․ որք իջանեն ՝ի գուբ։ Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի։ 6 *Եւ ՝ի մեռեալս ազատ։ Որպէս վիրաւորս․ որք ննջեն ՝ի գերեզմանի․ Զորս դու ոչ յիշեցեր․ նոքա ՝ի ձեռանէ քումմէ մերժեցան։ 7 *Եդին զիս ՝ի գուբ ներքնում, ՝ի խաւարի եւ ՝ի ստուերս մահու։ 8 *Յիս հաստատեցաւ սրտմտութիւն քո․ զամենայն զբօսանս քո ածեր ՝ի վերայ իմ։ 9 *Հեռի արարեր յինէն զծանօթս իմ․ եւ եդին զիս նշաւակ իւրեանց։ Մատնեցայ՝ եւ ոչ ելանէի․ 10 *աչք իմ տկարացան յաղքատութենէ։ Կարդացի առ Տէր զօրհանապազ․ եւ համբարձի առ քեզ զձեռս իմ։ 11 *Միթէ մեռելոց առնիցես զսքանչելիս․ կամ բժիշկք յարուցանիցեն․ եւ խոստովանիցին առ քեզ։ 12 *Մի թէ պատմեսցէ ոք երբեք ՝ի գերեզմանի զողորմութիւնս քո․ կամ զճշմարտութիւնս քո ՝ի կորստեան։ 13 *Մի թէ ճանաչիցին ՝ի խաւարի սքանչելիք քո․ կամ արդարութիւն քո յերկրի մոռացեալ։ 14 *Եւ ես առ քեզ Տէր աղաղակեցի․ առաւօտուց աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։ 15 *Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ․ կամ դարձուցանես զերեսս քո յինէն։ 16 *Տնանկ՝ եւ վաստակաւոր եմ ես ՝ի մանկութենէ իմմէ․ ՝ի բարձրութենէ խոնարհեցայ՝ եւ ափշեցայ։ 17 *Յիս հաստատեցաւ բարկութիւն քո․ արհաւիրք քո խռովեցուցին զիս։ 18 *Շրջեցան զինեւ որպէս զջուր․ զօր ամենայն պաշարեցին զիս ՝ի միասին։ 19 *Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ․ եւ զծանօթս իմ վասն թշուառութեան իմոյ։

1 Իմաստութիւն եմմանայ եզրայեցւոյ։

## ՁԸ։

2 Ողորմութիւնս քո Տէր յաւիտեան օրհնեցից․ յազգէ յազգ պատմեցից զճշմարտութիւնս քո բերանով իմով։ 3 *Ասացեր թէ աշխարհս ողորմութեամբ շինեսցի․ յերկինս պատրաստ եղիցի ճշմարտութիւն քո։ 4 *Եդի ուխտ ընտրելոց իմոց․ երդուայ դաւթի ծառայի իմոյ։ 5 *Յաւիտեան հաստատեցից զզաւակ քո․ եւ շինեցից յազգէ յազգ զաթոռ քո։ 6 *Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց քոց Տէր․ եւ ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց։ 7 *Ո՞վ է յամպս՝ որ հաւասարի քեզ․ կամ 8 ո՞վ նմանիցի Տն յորդիս Այ։ *Այ փառաւորեալ է ՝ի խորհուրդս սրբոց իւրոց․ մեծ եւ ահարկու ՝ի վերայ ամենեցուն ոյք շուրջ են զնովաւ։ 9 *Տէր Այ զօրութեանց՝ ո՞ նմանի քեզ․ հզօր ես դու Տէր՝ եւ ճշմարտութիւն քո շուրջ է 10 զքեւ։ *Դու տիրես զօրութեանց ծովու․ զխռովութիւն ալեաց նր դու ցածուցանես։ 11 *Դու խոնարհեցուցանես որպէս զվիրաւորս զամբարտաւանս․ ՝ի զօրութենէ բազկի քոյ ցրուեցեր զթշնամիս քո։ 12 *Քո են երկինք․ եւ քո է երկիր՝ զաշխարհս լրիւ իւրով դու հաստատեցեր։ 13 *Զհիւսիս՝ եւ զհարաւ դու արարեր․ թաբոր՝ եւ հերմոն յանուն քո ցնծասցեն։ 14 *Քո է բազուկ՝ եւ քո է զօրութիւն․ զօրասցի աջ քո՝ եւ բարձր եղիցի ձեռն քո։ 15 *Յարդարութիւն եւ յիրաւունս հաստատեալ է աթոռ քո․ ողորմութիւն եւ ճշմարտութիւն գնասցեն 16 առաջի երեսաց քոց։ *Երանի ժողովրդեան՝ որ գիտէ զօրհնութիւնս քո Տէր․ ՝ի լոյս երեսաց քոց գնասցեն։ 17 *Եւ յանուն քո ցնծասցեն զօրհանապազ․ եւ յարդարութեան քում բարձր 18 եղիցին։ *Պարծանք զօրութեանց նոցա դու ես․ եւ ՝ի կամս քո բարձր եղիցի 19 եղջիւր մեր։ *Ի Տէ է օգնութիւն․ որ սրբոյն իսրայէլի թագաւորին մերոյ։ 20 *Յայնժամ խօսեցար տեսլեամբ ընդ որդիս քո՝ եւ ասացեր․ եդի զօգնութիւն իմ

2 Թագ. 7.12.

Ծն. 1. 1.

իմ՝ի վերայ հզօրին՝ և բարձր արարի զընտրեալն 'ի ժողովրդենէ իմմէ։

21 *‖Գտի զԴաւիթ ծառայ իմ. իւղով սրբով իմով օծի զնա։ [1 Թագ. 16. 1. և 12. Գործ. 13.22.]
22 *Ձեռն իմ ընկալցի զնա. և բազուկ իմ զօրացուսցէ զնա։
23 *Մի՛ մեղիցէ նմա թշնամի. և որդի անօրէնութեան մի՛ չարչարեսցէ զնա։
24 *Հարից առաջի նորա զթշնամիս նորա. և զատելիս նորա 'ի պարտութիւն մատնեցից։
25 *Ճշմարտութիւն իմ, և ողորմութիւն իմ ընդ նմա. և յանուն իմ բարձր եղիցի եղջիւր նորա։
26 *‖Եդից 'ի ծովու զձեռն նորա. 'ի վերայ գետոց զաջ նորա։ [Յայտ. 1. 5.]
27 *Նա կարդասցէ առ իս. Հայր իմ ես դու. Աստուած ընդունող փրկութեան իմոյ։
28 *Ես անդրանիկ արարից զնա. և բարձր քան զամենայն թագաւորս երկրի։
29 *Յաւիտեան պահեցից նմա զողորմութիւն իմ. և ուխտ իմ հաւատարիմ ընդ նմա։
30 *Հաստատեցից յաւիտեանս յաւիտենից զզաւակ նորա. և զաթոռ նորա որպէս զաւուրս երկնից։
31 *Եթէ թողցեն որդիք նորա զօրէնս իմ. և յիրաւունս իմ ոչ կամեսցին գնալ։
32 *Եթէ զարդարութիւնս իմ անարգեսցեն. և զպատուիրանս իմ ոչ պահեսցեն։
33 *Հարից գաւազանաւ զանօրէնութիւնս նոցա. և տանջանօք զանիրաւութիւնս նոցա։
34 *Բայց զողորմութիւն իմ ոչ արգելից 'ի նոցանէ. և ոչ նենգեցից ճշմարտութեան իմում։
35 *և ոչ անարգեցից զուխտ իմ. և ինչ որ ելանէ ընդ շրթունս իմ. զայն ոչ արհամարհեցից։
36 *Միանգամ երդուայ 'ի սրբութիւն իմ. թէ Դաւթի ես ոչ ստեցից։
37 *‖Զաւակ նորա յաւիտեան կացցէ. և աթոռ նորա որպէս արեգակն առաջի իմ։ [2 Թագ. 7. 16. Յոհ. 12. 34.]
38 *որպէս զլուսին զի հաստատեալ է յաւիտեան վկայ հաւատարիմ յերկինս։
39 *Իսկ արդ դու մերժեցեր՝ և անարգեցեր. և ընդ վայր հարեր զօծեալ քո։
40 *Դարձուցեր զուխտ 'ի ծառայէ քումմէ. պղծեցեր յերկիր զսրբութիւն նորա։
41 *Քակեցեր զամենայն պարիսպս նորա. և եդեր զամուրս նորա 'ի դողումն։
42 *Յափշտակեցին զնա ամենայն որք անցանէին ճանապարհի. եղև նա նախատ դրացեաց իւրոց։
43 *Բարձր արարեր զաջ նեղչաց նորա. ուրախ արարեր զամենայն թշնամիս նորա։
44 *Դարձուցեր զօգնութիւն 'ի սրոյ նորա. և ոչ ընկալար զնա 'ի պատերազմի։
45 *Անարգեցեր զսրբութիւն նորա. զաթոռ նորա յերկիր կործանեցեր։
46 *Նուազ արարեր զաւուրս ժամանակաց նորա. և հեղեր զնովաւ զամօթ։
47 *Մինչև յերբ դարձուցանես զերեսս քո իսպառ. բորբոքեսցի որպէս զհուր բարկութիւն քո։
48 *Իսկ արդ յիշեա՛, և տես՝ ո՞վ է իմ հանգիստ. մի թէ 'ի զուր ինչ ստեղծեր զամենայն որդիս մարդկան։
49 *Ո՛վ է մարդ՝ որ կեցցէ, և ոչ տեսցէ զմահ. կամ փրկեսցէ զանձն իւր 'ի ձեռաց դժոխոց։
50 *Ո՞ւր են ողորմութիւնք քո առաջինք Տէր.‖ զոր երդուար Դաւթի ճշմարտութեամբ քով։ [2 Թագ. 7. 11.]
51 *Յիշեա՛ զնախատինս ծառայի քոյ. զոր ընկալայ 'ի ծոց իմ յազգաց բազմաց։
52 *Զոր նախատեցին թշնամիք քո Տէր. նախատեցին փոխանակ օծելոյ քոյ։
53 *Օրհնեալ Տէր Աստուած յաւիտեանս յաւիտենից. եղիցի՛ եղիցի։

1 Աղօթք Մովսէսի առն Աստուծոյ։ Ձթ։

2 ՏԷՐ ԱՊԱՒԷՆ ԵՂԵՐ մեր յազգէ մինչև յազգ։ *մինչև լերինք հաստատեալ էին. և մինչև ստեղծեր զերկիր և զամենայն տիեզերս։ Յաւիտենից մինչև յաւիտեանս դու ես։
3 *Մի՛ դարձուցաներ զմարդ 'ի տառապանս. և ասացեր՝ դարձարուք առ իս որդիք մարդկան։
4 *‖Հազար ամ յաչս Տեառն որպէս օր երէկն՝ զի էանց. որպէս զպահ մի գիշերոյ։ [2. Պետ. 3. 8.]
5 *և ամք նոցա անարգութեամբ եղիցին։ Ընդ առաւօտս որպէս զդալարի բուսցին։
6 *ընդ առաւօտս որպէս զդալարի զուարճասցին՝ և ծաղկեսցին. ընդ երեկոյս թարշամեսցին՝ չորասցին՝ և անկցին։
7 *Նուաղեցաք մեք 'ի բարկութենէ քումմէ. և 'ի սրտմտութենէ քումմէ խռովեցաք։
8 *Եդեր զմեղս մեր առաջի քո. և զկեանս մեր 'ի լոյս երեսաց քոց։
9 *Ամենայն աւուրք մեր նուաղեցան. և 'ի բարկութենէ քումմէ խռովեցաք։ Վաստակ ամաց մերոց անդադար որպէս սարդի։
10 *‖և թիւ աւուրց ամաց մերոց 'ի նոսա եօթանասուն ամ։ Ապա թէ առաւել լինի՝ ութսուն ամ. որ ինչ աւելի քան զայն՝ ցաւօք և հեծութեամբ։ Եկն 'ի վերայ մեր հեզութիւն և խրատեցաք։ [Սիր. 18.8.]
11 *Իսկ արդ ո՞ գիտասցէ զզօրութիւն բարկութեան քոյ. կամ յահէ քումմէ զսրտմտութիւն քո համարեսցի։
12 *Այպէս ցո՛յց ինձ զաջ քո. որք խոնարհք են սրտիւք զիմաստութիւն քո։
13 *Դարձ Տէր՝ մինչև յերբ. մխիթարեա՛ 'ի ծառայս քո։
14 *Լցաք առաւօտուց ողորմութեամբ քով. ցնծացաք՝ և ուրախ եղեաք զամենայն աւուրս կենաց մերոց։
15 *Ուրախ եղեաք փոխանակ աւուրցն՝ յորս խոնարհ արարեր զմեզ և ամացն, յորս տեսաք զչարչարանս։
16 *Հայեա՛ց

Տր̃ 'ի ծառայս քո՝ և 'ի գործս ձեռաց քոց. և առաջնորդեա՛ որդւոց նոցա։ 17 * եղիցի լոյս Տն̃ Այ 'ի վերայ մեր. Զգործս ձեռաց մերոց ուղիղ արա 'ի մեզ Տր̃. զգործս ձեռաց մերոց յաջողեա՛ մեզ։

1 Անվերնագիր 'ի հեբրայեցւոց՝ օրհնութիւն գովութեան։ Ղ.

Որ բնակեալ է յօգնութեան բարձրելոյն. ընդ հովանեաւ Այ երկնից հանգիցէ։ 2 *Ասասցէ Տն̃ ընդունող իմ ես դու՝ ապաւէն իմ Ած̃ և ես յուսամ 'ի նա։ 3 *Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին. և 'ի բանից խռովութեան։ 4 *'Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ. 'ի հովանի թևոց նորա յուսասցիս։ 5 *Որպէս զէն շուրջ եղիցի զքև ճշմարտութի նորա։ 6 *Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերոյ. և ոչ 'ի նետէ՝ որ թռչի 'ի տուէ։ Յիրէ՝ որ շրջի 'ի խաւարի. 'ի գայթագղութէ դիւին 'ի հասարակ աւուր։ 7 * Անկցին 'ի կողմանէ քումմէ հազարք. և բիւրք ընդ աջմէ քումմէ. և առ քեզ ինչ ոչ մերձեսցին։ 8 * Բայց միայն աչօք քովք նայեսցիս դու. և զհատուցումն մեղաւորաց տեսցես։ 9 * զի դու Տէր յոյս իմ ես։ Զբարձրեալն արարեր ապաւէն քեզ։ 10 * ոչ հասցեն առ քեզ չարք՝ և տանջանք ոչ մերձեսցին 'ի յարկս քո։ 11 *‖ Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վասն քո. պահել զքեզ յամ ճանապարհս քո։ 12 * 'Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ. զի մի երբեք հարցես զքարի զոտն քո։ 13 *'Ի վերայ իժից՝ և քարբից գնասցես դու. առ ոտն կոխեսցես զառիւծն՝ և զվիշապն։ 14 * Բանզի յիս յուսացաւ՝ և փրկեցից զնա։ հովանի եղէց նմա՝ զի ծանեաւ զանուն իմ։ 15 * Կարդասցէ առ իս՝ և ես լուայց նմա. և առ նմա եղէց 'ի նեղութե։ փրկեցից՝ և փառաւոր արարից զնա։ 16 * երկայնաւուրբք լցուցից զնա. և ցուցից նմա զփրկութի իմ։

‖ Մատ. 4. 6. Ղուկ. 4. 10.

1 Սաղմոս Օրհնութեան յաւուրն շաբաթու. Անվերնագիր 'ի հեբրայեցւոց։ ՂԱ.

2 Բարի է խոստովան լինել Տն̃. սաղմոս ասել անուան քում բարձրեալ։ 3 * Պատմել առաւօտուց զողորմութիւս քո. և զճշմարտութիւս քո 'ի գիշերի։ 4 * Տասնաղեաւ սաղմոսարանաւ. 'ի ձայն օրհնութե գովել։ 5 * Ուրախ արարեր զիս Տէր յարարածս քո. և 'ի գործս ձեռաց քոց ցնծացայց։ 6 * Որպ̃ զի մեծ են գործք քո Տր̃. և յոյժ խոր են խորհուրդք քո։ 7 * Այր անզգամ զայս ոչ ծանիցէ. և անմիտն զայս ոչ առնու 'ի միտ։ 8 * 'Ի բուսանիլ մեղաւորաց որպ̃ զխոտ. 'ի ծաղկիլ ամենեցուն՝ որք գործեն զանօրէնութի։ Սատակեսցին յաւիտեանս յաւիտենից։ 9 * և դու բարձրեալ ես յաւիտեանս Տր̃։ 10 * Զի ահա թշնամիք քո Տր̃. զի ահա թշնամիք քո կորիցեն. ցրուեսցին ամենեքեան՝ որք գործեն զանօրէնութի։ 11 * Բարձր եղիցի որպէս զմիեղջերուոյ եղջիւր իմ. և ծերութի իմ 'ի ձէթ պարարտութե։ 12 * Նտես ակն իմ 'ի թշնամիս իմ. որք յարուցեալք են 'ի վր̃ իմ չարութե՝ 'ի նմ̃ լուիցէ ունկն իմ։ 13 * Արդարք որպ̃ զարմաւենիս ծաղկեսցին. որպ̃ զմայրս լիբանանու բազումք եղիցին։ 14 * Տնկեալք եղիցին 'ի տան Տն̃. 'ի գաւիթս Այ մերոյ ծաղկեսցին։ 15 * Նա և բազումք եղիցին 'ի ծերութի պարարտութե. գիրգք և փափուկք եղիցին։ 16 * 'Ի պատմել ուղիղ է Տր̃ Ած̃ մեր. և ոչ գոյ 'ի նմա անիրաւութի։

Օրհնութիւն գովութեան ինքեան Դաւթի յաւուր նախաշաբաթու. յորժամ երկիր հաստատեցաւ։ (անվերնագիր 'ի հեբրայեցւոց։) ՂԲ.

1 Տր̃ թագաւորեաց. զվայելչութի զգեցաւ. զգեցաւ Տր̃ զզօրութի ընդ մէջ իւր էած։ Հաստատեաց զաշխարհ՝ զի մի սասանեսցի։ 2 * պատրաստ է աթոռ քո 'ի սկզբանէ. յաւիտենից դու ես։ 3 * Ամբարձան գետք Տր̃. և ամբարձին գետք զձայնս իւրե̃. յարիցեն գետք 'ի գնացս իւրեանց։ 4 * 'Ի ձայնէ ջուրց բազմաց. սքանչելիք եղեն զբօսանք ծովու։ Սքանչելի ես դու Տր̃ 'ի բարձունս։ 5 * Վկայութիւնք քո մեք յոյժ հաւատացաք։ Տան քում վայելէ սրբութի Տր̃ ընդ երկայն աւուրս։

Սաղմոս ինքեան Դաւթի չորեքշաբաթուն. (անվերնագիր 'ի հեբրայեցւոց։) ՂԳ.

1 Ած̃ վրէժխնդիր. Տէր Ած̃ վրէժխնդիր յայտնեցաւ։ 2 * Բարձր լեր՝ որ դատես զերկիր. հատո զհատուցումն ամբարտաւանից։ 3 * Մինչև յերբ մեղաւորք Տր̃. մինչև յերբ մեղաւորք պարծեսցին։ 4 * Բարբառեսցին խօսեսցին զանիրաւութի. խօսեսցին ամենեքեան՝ որք գործեն զանօրէնութի։ 5 * Զժողովուրդս քո Տր̃ խոնարհ արարին. և զժառանգութիւս քո չարչարեցին։ 6 * Զայրին, և զպանդուխտն սպանին. 7 և զորբան կոտորեցին։ * և ասացին ոչ տեսանէ զայս Տր̃. և ոչ 'ի միտ առնու Ած̃ յակոբայ։ 8 * Իմացարուք անզգամք ժողովրդեան. և անմիտք մին-

մինչև յերբ ոչ առնուք 'ի միտ ։ 9 *Ոչ զի թէ որ տնկեաց զունկն՝ ինքն ո՛չ լուիցէ. կամ որ ստեղծ զակն. ինքն ո՛չ տեսանիցէ ։ 10 *Որ խրատէ զազգս՝ ոչ թէ ո՛չ յանդիմանիցէ. որ ուսուցանէ մարդոյ զգիտութիւն ։ 11 *‖Տր ճանաչէ զխորհուրդս մարդկան՝ զի են ընդունայն ։ 12 *Երանի մարդոյ՝ զոր խրատես դու Տր. և յօրինաց քոց ուսուցանես դու նմա ։ 13 *Ցածուցանես դու նմա զաւուրս չարութեան. մինչև փորեսցի խորխորատ մեղաւորի ։ 14 *Ոչ մերժէ Տր զժողովուրդ իւր. և զժառանգութիւն իւր ոչ առնէ անտես ։ 15 *Մինչև դարձցին իրաւունք յարդարութիւն. ընկալցին զնա ամենեքեան՝ որք ուղիղ են սրտիւք ։ 16 *Ո՛վ յարիցէ ընդ իս 'ի վ̄ չարաց. կամ ո՞ հաւասարեսցի ինձ 'ի վերայ այնոցիկ. որք գործեն զանօրէնութիւն ։ 17 *Եթէ Տն ոչ օգնեալ էր ինձ. փոքր մի ևս բնակեալ էր անձն իմ 'ի դժոխս ։ 18 *Թէ ասէի՝ թէ ահա սասանեցան ոտք իմ. ողորմութիւն քո Տր օգնէր ինձ ։ 19 *Ըստ բազում ցաւոց սրտի իմոյ՝ մխիթարութիւն քո ուրախ առնէր զանձն իմ. 20 *Մի՛ հաւասարեսցի քեզ աթոռ անօրէնութեան. ո՛ պատճառէ զվաստակս ընդդէմ հրամանի ։ 21 *Որսասցեն զանձն արդարոյ. և զարիւն անբիծ պարտաւոր առնէին ։ 22 *Եղև Տր ապաւէն իմ. Ած օգնական յուսոյ իմոյ ։ 23 *Հատուսցէ նց Տր ըստ անօրէնութեան նց. ըստ չարութեան նց կործանեսցէ զնս Տր Ած մեր ։

Օրհնութիւն գովութեան ինքեան Դաւթի. Անվերնագիր 'ի հեբրայեցւոց։ Ղ. Դ.

1 Եկա՛յք ցնծասցուք 'ի Տր. աղաղակեսցուք առ Ած փրկիչ մեր ։ 2 *Կանխեսցուք առաջի նր խոստովանութբ. սաղմոսիւք աղաղակեսցուք առ նա ։ 3 *Ած մեծ է. և Տր թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի ։ 4 *'Ի ձեռս նորա են ամ տիեզերք երկրի. բարձրութիւնք լերանց նորա են ։ 5 *Նորա է ծով՝ և նա արար զնա. և զցամաք՝ ձեռք նորա ստեղծին ։ 6 *Եկա՛յք երկիր պագցուք նմա. անկցուք՝ և լացցուք առաջի Տն արարչին մերոյ ։ 7 *Զի նա ինքն է Տր Ած մեր. մեք ժողովուրդք 'ի ձեռին նր, և խաշն արօտի նր ։ 8 *‖Այսօր եթէ ձայնի նորա լուիցէք. մի՛ խստացուցանէք զսիրտս ձեր 9 * որպէս 'ի դառնութեանն ։ ‖Յաւուրն փորձութեան յանապատի ։ ուր փորձեցին զիս հարքն ձեր. քննեցին զիս. և տեսին զգործս իմ ։ 10 *Զքառասուն ամ ։ Զանայոյ ընդ ազգին ընդ այնմիկ, և ասացի. միշտ մոլորեալ են սրտիւք. 11 *և նք ոչ ծանեան զճանապարհս իմ ։ ‖Որպ երդուա՛յ 'ի բարկութն իմում. թէ մտցեն 'ի հանգիստ իմ ։

‖Ա.Կորն. 3. 20. — ‖Եբրայ. 3. 7. — ‖Թուոց 14. 22. — Ելից. 17. 2. և 7. — ‖Թուոց 14. 23. — Եբրայ. 4. 3.

Սաղմոս ինքեան Դաւթի 'ի ժամանակի զի տաճարն շինեցաւ յետ գերութեանն. անվերնագիր 'ի հեբրայեցւոց ։ Ղ. Ե.

1 Օրհնեցէք զՏր յօրհնութիւն նոր. օրհնեցէք զՏր ամ երկիր ։ 2 *Օրհնեցէք զՏր. և օրհնեցէք զանուն նր. աւետարանեցէք օրըստօրէ զփրկութիւն նր ։ 3 *Պատմեցէք 'ի հեթանոսս զփառս նր. յամ ժողովուրդս զսքանչելիս նր ։ 4 *‖Մեծ է Տր՝ և օրհնեալ է յոյժ. ահաւոր է նա 'ի վերայ ամ կռոց ։ 5 *Զի կուռք հեթանոսաց դևք են ։ և Տր զերկինս արար ։ 6 *Խոստովանութիւն և վայելչութիւն է առաջի նր. սրբութիւն և մեծ վայելչութիւն 'ի սրբութեան նր ։ 7 *Մատուցէք Տն տոհմք ազանց՝ մատուցէք Տն զփառս և զպատիւ ։ 8 *մատուցէք Տն զփառս անուան նր ։ Առէք զպատարագս՝ և մտէք 'ի սրահս նր ։ 9 *Երկիրպագէք Տն 'ի գաւիթս սրբութեան նր՝ և խռովեսցի յերեսաց նորա ամ երկիր ։ 10 *Ասացէք 'ի հեթանոսս՝ թէ Տր թագաւորեաց. հաստատեաց զաշխարհ՝ զի մի սասանեսցի. և դատէ զժողովուրդս իւր ուղղութբ ։ 11 *Ուրախ եղիցին երկինք, և ցնծասցէ երկիր. զուարճասցի ծով լրիւ իւրով ։ 12 *ցնծասցեն դաշտք՝ և ամենայն որ 'ի նոսա ։ Յայնժամ ցնծասցեն ամենայն ծառք անտառի ։ 13 *յերեսաց Տն, զի գայ՝ և գայ նա 'ի դատել զերկիր ։ Դատէ զտիեզերս իրաւամբք. և ժողովուրդս ամենայն ճշմարտութբ իւրով ։

‖Ա.Մնաց. 16. 23. — ‖Սիրաք. 43. 31.

1 Դաւթի. 'ի ժամանակի զի երկիր հաստատէր. անվերնագիր 'ի հեբրայեցւոց ։ Ղ. Զ.

Տր թագաւորեաց՝ ցնծասցէ երկիր. ուրախ եղիցին կղզիք բազումք ։ 2 *Ամպ՝ և մէգ շուրջ է զնովաւ. յիրաւունս՝ և յարդարութիւն ուղղեալ է աթոռ նր ։ 3 *Հուր առաջի նր գնասցէ. այրեսցէ շուրջ զթշնամիս նորա ։ 4 *Երևեցան փայլատակունք նր տիեզերաց. ետես՝ և սասանեցաւ երկիր ։ 5 *Լերինք ո՛պ մոմ հալեցին յերեսաց Տն. յերեսաց Տն ամենայն երկիր ։ 6 *Պատմեցեն երկինք զարդարութիւն նր. տեսին ամ ժողովուրդք զփառս նր ։ 7 *‖Ամաչեսցեն ամենեքեան՝ որք երկիրպագանեն կռոց. և որք պարծին 'ի դրօշեալս իւրեանց ։ ‖Երկիրպագ- 8 ցեն նմա ամ հրեշտակք նր ։ * Լուաւ

‖Ելից. 20. 4. — Ղևտ. 26. 1. — Բ. Օրէ. 5. 8. — ‖Եբրայ. 1. 6.

և ուրախ եղև սիոն. և ցնծասցեն դստերք յուդայ վն իրաւանց քոց Տր։ 9 * Զի դու բարձրեալ ես ՚ի վերայ ամ երկրի. յոյժ բարձրացար ՚ի վր ամ կռոց։ 10 * ‖ Որք սիրէք զՏր՝ ատեցէք զչարութիւն. պահէ Տր զանձինս սրբոց իւրոց. ՚ի ձեռաց մեղաւորի փրկէ զնս։ 11 * Լոյս ծագեցաւ արդարոց. ուղղոց սրտիւք եղև ուրախութիւն։ 12 * Ուրախ եղերուք արդարք ՚ի Տր. խոստովան եղերուք յիշատակի սրբութեն նորա։

‖ Ամովս. 5.15. Հռովմ. 12.9.

### Սաղմոս ենքեան Դաւթի։ ՂԷ.

1 Օրհնեցէք զՏր յօրհնութիւն նոր. զի սքանչելիս արար։ Փրկեաց նմա աջ իւր. և բազուկ սբ իւր։ 2 * ‖ Ծանոյց Տր զփրկութիւն իւր. առաջի ազգաց յայտնեաց զարդարութիւն իւր։ 3 * Յիշեաց զողորմութիւն իւր զյակոբայ. զճշմարտութիւն իւր ՚ի վերայ տանն իսրլի. և տեսին ամ ծագք երկրի զփրկութիւն Այ մերոյ։ 4 * Աղաղակեցէք առ Տր ամ երկիր. օրհնեցէք՝ ցնծացէք՝ և սաղմոս ասացէք։ 5 * Սաղմոս ասացէք Այ մերոյ օրհնութբ. օրհնութբ՝ և ՚ի ձայն սաղմոսաց։ 6 * ՚Ի ձայն օրհնութեն կռածոյ փողոյ. օրհնութբ՝ ցնծութբ՝ և ՚ի ձայն եղջեր փողոյ աղաղակեցէք առաջի Թագաւորին Տն։ 7 * Խռովեսցի ծով լրիւ իւրով՝ տիեզերք և ամ բնակիչք նորա։ 8 * և գետք ծափս հարցեն ՚ի միասին ձեռամբ։ 9 * Լերինք ցնծասցեն առաջի Տն, զի գայ. զի հասեալ է Տր ՚ի դատել զերկիր։ Դատէ զաշխարհս արդարութբ. և զժողովուրդս իւր ուղղութբ։

‖ Եսայ. 52. 10.

### Սաղմոս ենքեան Դաւթի։ ՂԸ.

1 Տր թագաւորեաց՝ բարկացան ժողովուրդք՝ որ նստի ՚ի քրովբէս՝ սասանեցաւ երկիր։ 2 * Տր ՚ի սիոն մեծ է. և բարձր է ՚ի վր ամ ժողովրդոց։ 3 * Խոստովան եղիցուք անուան քում մեծի, զի ահաւոր և սբ է։ 4 * պատիւ Թագաւորի զիրաւունս սիրէ։ Դու պատրաստեցեր զուղղութիւն. զիրաւունս՝ և զարդարութիւն յակոբայ դու արարեր։ 5 * Բարձր արարէք զՏր Ած մեր. երկիրպագէք պատուանդանի ոտից նր. զի սբ է։ 6 * Մովսէս և Ահարոն երիցունք նր. սամուէլ ընդ այնոսիկ՝ որք կարդան զանուն նր։ Կարդային առ Տր՝ և նա լսէր նց։ 7 * և ՚ի սիւն ամպոյ խօսէր ընդ նոսա։ Պահէին զվկայութիւն նորա. և զհրամանս զորս ետ նոցա։ 8 * Տէր Ած մեր՝ դու լսէիր նոցա. Ած դու քաւիչ լինէիր նց. և վրէժխնդիր ՚ի վերայ ամ գործոց նց։ 9 * Բարձր արարէք զՏր Աստ մեր. երկիր պագէք ՚ի լեառն սբ նր. զի սբ է Տր Ած մեր։

### Սաղմոս ՚ի խոստովանութիւն։ ՂԹ.

1 2 Աղաղակեցէք առ Տէր ամ երկիր. ծառայեցէք Տն ուրախութբ։ 3 Մտէք առաջի նր ցնծութբ։ * Ծանիրուք՝ զի նա է Տր Ած մեր։ Նա արար զմեզ՝ և ոչ մեք. մեք ժողովուրդ՝ և 4 խաշն արօտի նր։ * Մտէք ընդ դրունս նորա խոստովանութբ. և օրհնութբ ընդ յարկս նր։ Խոստովան եղերուք Տն՝ և օրհնեցէք զանուն նորա։ 5 * Քաղցր է Տր. յաւիտեանս է ողորմութիւն նորա. յազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն նորա։

### Սաղմոս ենքեան Դաւթի։ Ճ.

1 Զողորմութիւն, և զիրաւունս օրհնեցից զքեզ Տր. սաղմոս ասացից. 2 * և ՚ի միտ առից։ Ճանապարհ ամբիծ մինչև եկեսցէ առ իս. զի գնայի ես ամբծութբ սրտի իմոյ՝ և ՚ի մէջ տան 3 իմոյ։ * Ոչ եդի առաջի աչաց իմոց զիրս անիրաւութեն. որք առնէին զանօրէնութիւնս, ատեցի։ Ոչ մերձեցաւ 4 առ իս։ * որ թիւրն էր սրտիւ. խոտորիլ յինէն անզգամին՝ և ինչ ոչ փոյթ 5 առնէի։ * Որ խօսէր գաղտ զընկերէ իւրմէ. զնա ՚ի բացէ ՚ի բաց հալածէի։ Որ ամբարտաւան էր աչօք՝ և ագահ սրտիւ. ընդ նմա և հաց ոչ ու_ 6 տէի։ * Աչք իմ ՚ի հաւատացեալս երկրի. զի նստցին նոքա ընդ իս։ Որ գնայր ՚ի ճանապարհ անբիծ. նա պաշ_ 7 տէր զիս։ * Ոչ բնակիւր ՚ի մէջ տան իմոյ՝ որ առնէր զամբարտաւանութի. որ խօսէր զանօրէնութիւն՝ չէր յաջողեալ նմա առաջի աչաց իմոց։ 8 * Ընդ առաւօտս սպանանէի զամ մեղաւորս երկրի. զի սատակեցից ՚ի քաղաքէ Տն զամենեսեան՝ որք գործեն զանօրէնութիւն։

### 1 Աղօթք աղքատի՝ յորժամ հոգայր՝ և առաջի Տն հեղոյր զխնդրուածս իւր։ ՃԱ.

2 Տէր լուր աղօթից իմոց. և աղաղակ 3 իմ առ քեզ եկեսցէ. * մի դարձուցաներ զերեսս քո յինէն։ Յաւուր նեղութեն իմոյ խոնարհեցո առ իս զունկն քո. յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի լուր ինձ. 4 * Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ. և ոսկերք իմ որպէս խուիւ չորացան։ 5 * Հարայ որպէս խոտ՝ և ցամաքեցաւ սիրտ 6 իմ. մոռացայ ուտել զհաց իմ։ * ՚ի ձայն հեծութեն իմոյ։ Կցեցաւ ոսկր իմ ՚ի մար_

'ի մարմին իմ ։ * Նմանեցայ ես հաւալա 7
սան անապատի ։ Եղէ ես որպէս զբու
յաւերակի ։ * տքնեցայ՝ և եղէ ես որպ 8
զճնճղուկ միայն 'ի տանիս ։ * Նախա 9
տեցին զիս թշնամիք իմ զօրհանա_
պազ ․ և գովիչք իմ ինև երդնուին ։
* Զմոխիր որպէս զհաց կերի ․ և զըմ 10
պելի իմ արտասուօք խառնեցի ։
* Յերեսաց բարկութեան սրտմտութեան 11
քո ․ զի դու բարձրացուցեր , և խոնար
հեցուցեր զիս ։ * Աւուրք իմ որպէս 12
հովանի անցին ․ և ես որպէս խոտ ցա
մաքեցայ ։ * Դու Տր յաւիտեան կաս ․ 13
և յիշատակ քո յազգէ մինչև յազգ ։
* Դու յարուցեալ գթասցիս 'ի վր սիո 14
նի ․ ժամանակ գթալոյ նր հասեալ է
ժամ ։ * Հաճեցան ծառայք քո ընդ 15
քարինս նր ․ և 'ի հողս նր գթասցին ։
* Երկիցեն հեթանոսք յանուանէ 16
քումմէ ․ և ամ թագաւորք երկրի
'ի փառաց քոց ։ * Շինէ Տր զսիոն ․ 17
և երևեսցի փառօք իւրովք 'ի նմա ։
* Հայեցաւ նա յաղօթս խոնարհաց ․ և 18
ոչ արհամարհեաց զխնդրուածս նց ։
* Գրեսցի այս յազգ յայլ ․ ժողովուրդ՝ 19
որ ստացեալէ՝ օրհնեսցէ զՏր ։
* Հայեցաւ նա 'ի բարձանց՝ 'ի սրբութենէ 20
իւրմէ ․ Տր յերկնից յերկիր հայեցաւ ։
* Լսել զհեծութիւն կապելոց ․ և ար_ 21
ձակել զորդիս մահապարտաց ։
* Պատմել 'ի սիոն զանուն Տն ․ և զօրհ 22
նութիւնս նր յեմ ։ * Ժողովել ժողովր 23
դոց 'ի միասին ․ և թագաւորաց ծա_
ռայել Տն ։ * Պատասխանի ետ նմա 24
'ի ճանապարհի զօրութեան իւրոյ ․ զնուա
զութիւն աւուրց իմոց ասա ինձ ․ * մի 25
հաներ զիս 'ի կէս աւուրց իմոց ․ զի
յազգէ յազգ են ամք քո ։ * ‖ Ի սկզբա 26
նէ Տր զհիմունս երկրի հաստատե_
ցեր ․ և գործք ձեռաց քոց երկինք են ։
* Նոքա անցանեն ․ և դու կաս՝ և մնաս 27
յաւիտեան ։ Ամենեքեան որպ զձորձս
մաշեսցին ․ և որպ զվերարկու փոխես
ցես զնոսա՝ և փոխեսցին ։ * Բայց դու 28
նոյն ես՝ և ամք քո ոչ անցանեն ։ * որդիք 29
ծառայից քոց բնակեսցին 'ի նմա ․ և
զաւակ նց յաւիտեան յաջողեսցի ։

‖ Եբրայ. 1.10.

Սաղմոս ենթեան Դաւթի ։ ՃԲ ։

Օրհնեա անձն իմ զՏր ․ և ամ ոս_ 1
կերք իմ զանուն սբ նր ։ * Օրհ_ 2
նեա անձն իմ զՏր ․ և մի մոռանար զամ
տուրս նր ։ * Որ քաւէ զմեղս քո ․ բժշկէ 3
զամ հիւանդութիւնս քո ։ * Որ փրկէ յապա_ 4
կանութենէ զկեանս քո ․ պսակէ զքեզ
ողորմութբ , և գթութբ ։ * Որ լնու 'ի 5
բարութենէ զցանկութիւնս քո ․ նորոգեսցի
որպէս արծուոյ մանկութիւն քո ։

6 * Առնէ ողորմութիւնս Տր ․ և իրաւունս
7 ամ զրկելոց ։ * Եցոյց զճանապարհս
իւր մովսէսի ․ որդւոցն իսրլի զկամս իւր ։
8 * ‖ Գթած՝ ողորմած է Տր ․ երկայնա_
9 միտ՝ և բազումողորմ ։ * Ոչ իսպառ բար
կանայ Տէր ․ և ոչ յաւիտեան պահէ
10 ոխս ։ * Ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ ․
և ոչ ըստ անօրէնութեան մերում հա_
11 տոյց մեզ ։ * Այլ որպ բարձր են երկինք
յերկրէ ․ այնպէս զօրացոյց Տր զողոր_
մութիւն իւր 'ի վր երկիւղածաց իւրոց ։
12 * Որչափ հեռի են արևելք յարևմտից ․
այնչափ հեռի արար 'ի մէնջ զանօրէնու
13 թիւս մեր ։ * Որպ գթայ հայր 'ի վերայ
որդւոց իւրոց , այնպէս գթասցի Տր
14 յերկիւղածս իւր ։ * Զի նա գիտաց
զստեղծուածս մեր ․ և յիշեաց թէ հող
15 եմք ։ * Մարդոյ որպ խոտոյ են աւուրք
իւր ․ որպ ծաղիկ վայրի՝ այնպէս ծաղկի ։
16 * Շնչէ 'ի նմա հողմ ․ և ոչ է ․ և ոչ ևս
17 երևի տեղի նր ։ * Բայց ողորմութիւն
Տն յաւիտեանս յաւիտենից 'ի վերայ
երկիւղածաց իւրոց ․ և արդարութիւն
18 նորա յորդւոց մինչև յորդիս ։ * Որք
պահեն զուխտս նր ․ յիշեն զպատուիր_
19 րանս նորա՝ և առնեն զնա ։ * Տր յեր_
կինս պատրաստեաց զաթոռ իւր ․
արքայութիւն նր ամենեցուն տիրէ ։
20 * Օրհնեցէք զՏր ամ հրեշտակք նր
հզօրք զօրութբ ․ որք առնէք զբանս
նր 'ի լսել ձայնի պատգամաց նորա ։
21 * Օրհնեցէք զՏր ամ զօրութիւնք նորա՝
պաշտօնեայք նր ․ և արարողք կամաց
22 նր ։ * Օրհնեցէք զՏր ամ գործք նր ․
յամ տեղիս է տէրութիւն նր ․ օրհնեա
անձն իմ զՏր ։

‖ Թուոց 14. 18.

Եսայեայ

1 Սաղմոս Դաւթի 'ի վերայ աշխարհագործ
արարածոց ։ ՃԳ ։

Օրհնեա անձն իմ զՏր ․ Տր Ած իմ
մեծ եղեր յոյժ ։ Խոստովանութիւն և
2 զմեծ վայելչութիւն զգեցար ։ * արկեր զլոյս
որպէս զօթոց ․ ձգեցեր զերկինս որպէս
3 խորան ․ * և արկեր 'ի վերայ ջուրց զվեր
նայարկս նր ։ Որ դնէ յամպս զգնացս
իւր ․ և շրջի նա 'ի վր թևոց հողմոց ։
4 * ‖ Որ արար զհրեշտակս իւր յոգիս , և
զպաշտօնեայս իւր 'ի հուր կիզելոյ ։
5 * Որ հաստատեաց զերկիր 'ի վր հաստա
տութեան իւրոյ ․ մի սասանեսցի յաւիտեանս
6 * Խորք որպէս զգեստ վերարկու է նր ․
'ի վերայ լերանց կացցեն ջուրք ։
7 * 'Ի սաստէ քումմէ փախիցեն ․ և 'ի
ձայնէ որոտալոյ քումմէ սարսիցեն ։
8 * Ելանեն լեռնանան ․ և իջանեն դաշ
տանան 'ի տեղի յոր հաստատեցեր զնս ։
9 * Սահման եդեր ․ և ոչ անցանեն ․ և
ոչ ևս դառնան 'ի ծածկել զերկիր ։

‖ Եբրա. 1. 7.

* Առա_

10 *Առաքեցեր զաղբիւրս 'ի ձորձորս. 'ի միջոյ լերանց գնասցեն ջուրք։
11 *Արբուցանել զամ գազանս վայրենեաց. գտցեն ցիռք 'ի ծարաւս իւրեանց։
12 *Անդ թռչունք երկնից բոյնս դիցեն՝ և 'ի միջոյ վիմաց տացեն զձայնս իւրե։
13 *Արբուցանէ զլերինս 'ի շտեմարանաց իւրոց. 'ի պտղոյ գործոց իւրոց լցցի երկիր։
14 *Բուսուցեր զխոտ անասնոց. զդալարի 'ի ծառայութի մարդկան. հանել զհաց յերկրէ։
15 *գինի ուրախ առնէ՝ իւղ զուարթ. և հաց հաստատէ զսիրտ մարդոյ։
16 *Յագեսցին ծառք անտառի և մայրք լիբանանու. զորս դու տնկեցեր։
17 *Անդ թռչունք երկնից ձագս հանիցեն. և բոյն արագլի առաջին է նոցա։
18 *Լերինք բարձունք են եղջերուաց. վէմք ապաւէնք նապաստակաց։
19 *Արարեր զլուսին վն ժամանակի. արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ։
20 *Արարեր զխաւար. և եղև գիշեր՝ 'ի նմա գնան ամ գազանք անտառի։
21 *Կորիւնք առիւծուց մռնչեն, և յափշտակեն. և խնդրեն յԱՅ զկերակուրս իւրե։
22 *Ծագել արևու ժողովեին. և 'ի մորիս իւրե դադարեին։
23 *Ելանէ մարդ 'ի գործս իւր. 'ի վաստակս ձեռաց իւրոց մինչև ցերեկոյ։
24 *Որպէս զի մեծ են գործք քո Տր. զամենայն ինչ իմաստութբ արարեր. լցաւ երկիր ստեղծուածովք քովք։
25 *Այս ծով մեծ և անդորր. 'ի սմա զեռունք. որոց ոչ գոյ թիւ. գազանք մեծամեծք և մանունք։
26 *'ի սմա և նաւք գնան. ||վիշապ, զոր ստեղծեր խաղալ նովաւ։ (|| Յոբ. 40. 14։)
27 *|| Ամենեքեան քեզ սպասեն. և դու տաս կերակուր նց 'ի ժամու։ (|| Սաղ. 144. 15.)
28 *Տաս դու նոցա՝ և կերակրին. բանաս զձեռն քո. կերակրես զամենայն կամօք քովք։
29 *Դարձուցանես զերեսս քո 'ի նոցանէ՝ և խռովին. հանես զոգի 'ի նոցանէ՝ պակասին, և 'ի հող իւրեանց դառնան։
30 *Առաքես զոգի քո՝ և ստանաս զնոսա. և նորոգես զերեսս երկրի։
31 *Եղիցին փառք Տն յաւիտեան. Տր ուրախ եղիցի յարարածս իւր։
32 *Որ հայի յերկիր՝ և տայ դողալ սմա. մերձի 'ի լերինս՝ և ծխեսցին։
33 *||Օրհնեցից զՏր 'ի կենամ իմ. սաղմոս ասացից Այ իմոյ՝ մինչև եմ ես։ (|| Սաղ. 145. 2.)
34 *Քաղցր եղիցի նմա օրհնութի իմ. և ես ուրախ եղէց 'ի Տր։
35 *Պակասեսցին մեղաւորք յերկրէ. ամպարիշտք մի ևս գտցին 'ի սմա. օրհնեա անձն իմ զՏր։

## Ալէլուիա։ ՃԴ.

1 Խոստովան || եղերուք Տն և կարդացէք զանուն նր. պատմեցէք 'ի հեթանոսս զգործս նր։ (|| 1. Մն. 16. 8.)
2 *Օրհնեցէք՝ և Սաղմոս ասացէք նմա. պատմեցէք զամ զքանչելիս նր։ (|| Եսայ. 12. 4.)
3 *և գովեցարուք յանուն սուրբ նր. Ուրախ եղիցին սիրտք այնոցիկ՝ ոյք խնդրեն զՏր։
4 *Խնդրեցէք զՏր, և հզօրք եղերուք՝ խնդրեցէք զերեսս նորա յամենայն ժամ։
5 *Յիշեցէք զքանչելիս նր՝ զոր արար. զարուեստս և զիրաւունս բերանոյ նր։
6 *Զաւակ աբրահամեան ծառայք նր. որդիք յակոբայ ընտրեալք նորա։
7 *Նա ինքն է Տր Այ մեր. յամ երկրի են իրաւունք նորա։
8 *Յիշեաց յաւիտենից զուխտ իւր. բանն, զոր պատուիրեաց մինչ 'ի հազար ազգս։
9 *|| Զուխտն, զոր եդ ընդ աբրահամու. և զերդումն իւր ընդ իսահակայ։ (|| Ծնն. 22. 16.)
10 *Հաստատեաց առ յակոբ զհրաման իւր. և առ իէլ զուխտ իւր յաւիտենից։ (Ղուկ. 1. 73.)
11 *Ասէ, Քեզ տաց զերկիրն քանանու. զվիճակ ժառանգութե ձերոյ։ (Եբր. 6. 17.)
12 *Մի էին նոքա թուով սակաւք. նուազք և պանդուխտք 'ի նմա։
13 *Անցին նոքա յազգէ յազգ. 'ի թագաւորութե 'ի ժողովուրդ յայլ։
14 *Ոչ եթող մարդկան մեղանչել նց՝ կշտամբեաց զթագաւորս վասն նոցա։
15 *||Մի մերձենայք, ասէ՝ յօծեալս իմ. և 'ի մարգարէս իմ մի մեղանչէք։ (|| 1. Մն. 16. 22.)
16 *Կոչեաց զսով յերկիր նց. զամ զօրութի հացի եբեկ։ (2 Թագ. 1. 14.)
17 *||Առաքեաց առաջի նց զայր՝ 'ի ծառայութի վաճառեցաւ յովսէփ։ (|| Ծնն. 37. 36.)
18 *||Խոնարհ արարին 'ի կապանս զոտս նորա. և եանց ընդ երկաթ անձն նր։ (|| 39. 20.)
19 *Մինչև եկեսցէ բանն նորա. և բանն Տն փորձեաց զնա։
20 *||Առաքեաց թագաւորն. և ելոյծ զնա. իշխան ժողովրդեան եթող զնա։ (|| Ծնն. 41. 14.)
21 *||Կացոյց զնա Տր 'ի վերայ տան իւրոյ. իշխան 'ի վերայ ամենայն ստացուածոց իւրոց։ (|| 41. 40.)
22 *Խրատել զիշխանս նց որպէս զինքն՝ և զծերս նոցա իմաստունս արասցէ։
23 *||Եմուտ իսրայէլ յեգիպտոս. յակոբ պանդխտեցաւ յերկիր քամայ։ (|| Ծնն. 46. 6.)
24 *||Աճեցոյց զժողովուրդ իւր յոյժ. և զօրացոյց զնոսա քան զթշնամիս իւր։ (|| Ելք. 1. 7.)
25 *Դարձոյց զսիրտս նոցա՝ յատել զժողովուրդ իւր. և 'ի նենգել զծառայս իւր։ (Գործ. 7. 17.)
26 *||Առաքեաց զմովսէս ծառայ իւր՝ և զահարոն ընտրեալ իւր։ (|| Ելք. 3. 10. և 4. 29.)
27 *Եդ նց զբանս նշանաց իւրոց. և զարուեստ իւր յերկիր քամայ։
28 *||Առաքեաց զխաւար՝ և խաւարեցոյց զնոսա. զի դառնացուցին զբանս նորա։ (|| Ելք. 10. 22.)

*|| Դար_

[Ելից. 7. 20.] 29 * Դարձոյց յարիւն զգետս նոցա. եւ սպան զձուկն նոցա։ [8. 6.] 30 * Եռաց յերկիր նոցա գորտ. 'ի շտեմարանս թագաւորաց նոցա։ [8. 24.] 31 * Ասաց՝ եւ եկն շանաճանճ, եւ մժեխ ընդ ամենայն սահմանս նոցա։ [9. 23.] 32 * Դարձոյց զանձրեւս նց 'ի կարկուտ. եւ հուր յերկիր նոցա բորբոքեցաւ։ 33 * Եհար զայգիս՝ եւ զթզենիս նց՝ եւ փշրեաց զամենայն ծառս սահմանաց նոցա։ [Ելից. 10. 4. եւ 12.] 34 * Ասաց, եւ եկն մարախ՝ եւ խառնիճ. զի ոչ գոյր թիւ։ 35 * Եկեր զամ խոտ երկրի նոցա. սպառեաց զամ պտուղ անդոյ նոցա։ [12. 29.] 36 * Եհար զամենայն անդրանիկս եգիպտացւոց. զսկիզբն ամենայն վաստակոց նոցա։ [12. 35.] 37 * Եհան զնս ոսկւով՝ եւ արծաթով. եւ ո՛չ գոյր յազգի նց հիւանդ։ 38 * Ուրախ եղեւ եգիպտոս ընդ ելանել նոցա. զի անկաւ ահ Տն 'ի վերայ նց։ [Ելից. 13. 21.] 39 * Սփռեաց ամպ հովանի առնել նոցա 'ի տուէ. եւ հրով լոյս տայր նոցա 'ի գիշերի։ [Սաղմ. 77. 14.] 40 * Խնդրեցին՝ եւ եկն լորամարգի. եւ հացիւ երկնից լցոյց զնոսա։ [1. Կորն. 10. 1.] 41 * Եհար զվէմն՝ եւ բղխեցին ջուրք. եւ գնացին գետք ընդ անջրդիս։ [Ելից. 16. 13.] 42 * Յիշեաց զբան իւր սուրբ՝ որ ընդ աբրահամու ծառայի իւրոյ։ [Թւոց 20. 11.] 43 * Եհան զժողովուրդ իւր ցնծութբ. եւ զընտրեալս իւր ուրախութբ։ [Յեսու. 11. 4.] 44 * Ետ նոցա զգաւառս հեթանոսաց. 'ի վաստակս ժողովրդոց ժառանգեցոյց զնոսա։ [Ծննդ. 17. 7. եւ 22. 16.] 45 * Զի պահեսցեն զկայս-ութիս նր. եւ զօրէնս նր խնդրեսցեն։

## Ալէլուիա։ ՃԵ։

[Յուդթ. 13. 21.] 1 Խոստովան եղերուք Տն զի քաղցր է. զի յաւիտեան է ողորմութի նր։ [Սիրաք. 43. 35.] 2 * Ո՞ խօսեսցի զզօրութիս Տն. լսելի արասցէ զամենայն զօրհնութիս նր։ 3 * Երանի որք պահեն զիրաւունս. եւ առնեն զարդարութի յամժամ։ 4 * Յիշեա՛ զմեզ Տր ընդ հաճոյս ժողովրդեան քո. եւ այց արա մեզ 'ի փրկութե քում։ 5 * Տեսցուք մեք զքաղցրութի ընտրելոց քոց. ուրախ եղիցուք յուրախութի ազգի քո. եւ գովեսցուք մեք 'ի ժառանգութեան քում։ [Յուդթ. 7. 19.] 6 * Մեղաք մեք ընդ հարս մեր. անօրինեցաք՝ եւ յանցեաք։ 7 * Հարք մեր յեգիպտոս ո՛չ իմացան զսքանչելիս քո. եւ ո՛չ յիշեցին զբազում ողորմութիս քո։ Դառնացուցին զքեզ 'յանցանելն իւրեանց ընդ ծով կարմիր։ 8 * փրկեաց զնոսա վասն անուան իւրոյ՝ զի ծանուցեն զզօրութիս նորա։ [Ելից. 14. 22.] 9 * Սաստեաց 'ի ծով կարմիր. եւ ցամաքեցաւ. առաջնորդեաց նց ընդ անդունդս որպէս ընդ անապատ։ 10 * Ապրեցոյց զնոսա 'ի ձեռաց ատելեաց նց. եւ փրկեաց զնոսա 'ի ձեռաց թշնամեաց նոցա։ [14. 27.] 11 * Ծածկեաց ծով զնեղիչս նց. եւ մի 'ի նոցանէ ո՛չ ապրեցաւ։ 12 * Հաւատացին բանի նր. եւ օրհնեցին զօրհնութիս նորա։ 13 * Վաղվաղեցին՝ եւ մոռացան զգործս նորա. եւ ոչ անսացին խորհրդոց նորա։ [Ելից. 17. 2. 1. Կորն. 10. 6.] 14 * Ցանկացան ցանկութի յանապատի. 15 փորձեցին զՏր յանջրդի։ * Ետ նց զխնդրուածս նոցա. առաքեաց 16 զլիութի յանձինս նց։ * Դառնացուցին զմովսէս 'ի բանակի. եւ զահարոն [Թւոց 11. 31.] 17 սբ Տն։ * Բացաւ երկիր. եւ եկուլ զդաթան. եւ ծածկեաց զբանակն զաբիրոնի։ [Թւոց 16. 32.] 18 * Հուր վառեցաւ 'ի ժողովս նոցա. եւ բոց մաշեաց զմեղաւորս։ [Ելից. 32. 4.] 19 * Արարին զորթն 'ի քորեբ. եւ երկիր 20 պագին պատկերին։ * Եւ փոխեցին ըզ փառս իւրեանց 'ի նմանութի որթու 21 խոտակերի։ * Մոռացան զԱծ կենարար իւրեանց, որ արար զմեծամեծս 22 յեգիպտոս։ * Եւ զսքանչելիս իւր յերկիր քամայ. եւ զահ իւր 'ի վերայ կարմիր 23 ծովուն։ * Ասաց սատակել զնս. [Ելից. 32. 10.] եթէ ոչ մովսէս ընտրեալ կայր առաջի նորա։ Դարձաւ առ Տր՝ եւ անցոյց ըզ բարկութի նորա. զի մի սատակեսցին 24 նոքա. * Անարգեցին զերկիրն ցանկալի. եւ ոչ հաւատացին բանի նորա։ 25 * Տրտնջեցին 'ի բանակս իւրեանց. եւ 26 ոչ լուան ձայնի Տեառն։ * Համբարձ [Թւոց 14. 29.] զձեռն իւր 'ի վերայ նոցա. հարկանել 27 զնոսա յանապատի։ * Ցրուեսցի զաւակ նոցա ընդ հեթանոսս. ցրուեսցի 28 զաւակ նց ընդ գաւառս։ * Պղծեցան նոքա 'ի բեէղփեգովր. եւ կերին զոհեալս 29 եւ զմեռելոտիս։ * Դառնացուցին զնա 'ի գործս իւրեանց. յաճախեաց 'ի վե 30 նոցա բեկումն։ * Ապա եկաց 'ի մէջ [Թւոց 25. 7.] փենէհէս՝ քահեաց՝ եւ արգելաւ մահ։ 31 * համարեցաւ նմա յարդարութիւն. յազգէ յազգ մինչեւ յաւիտեան։ 32 * Դառնացուցին զնա 'ի ջուրս հա- [Թւոց 20. 1?.] կառակութե. չարչարեցաւ մովսէս վն 33 նոցա։ * զի դառնացուցին զհոգի նր։ 34 Հրամայեաց շրթամբք իւրովք։ * Եւ ոչ սատակեցին զազգսն. զորս ասաց 35 նց Տր։ * Խառնակեցան ընդ հեթանոսս. 36 եւ ուսան զգործս նց։ * Ծառայեցին կռոց նց. եւ եղեւ նց 'ի գայթագ- 37 ղութիւն։ * Զոհեցին զուստերս՝ եւ 38 զդստերս իւրեանց դիւաց։ * Եւ հեղին զարիւն ամբիծ։ Արիւն ուստերաց եւ դստերաց իւրեանց. զոր զոհե- 39 ցին կռոցն քանանու։ * Շաղախեցաւ երկիր յարենէ նց։ Եւ պղծեցաւ 'ի գործոց նց. զի պոռնկեցան 'ի գնացս իւր- 40 եանց։ * Բարկացաւ սրտմտութբ Տր

'ի վերայ

'ի վերայ ժողովրդեան իւրոյ. գարշե-
ցոյց զժառանգութիւն իւր: *Մատ- 41
նեաց զնոսա 'ի ձեռս հեթանոսաց.
տիրեցին նոցա ատեցողք իւրեանց:
*և թշնամիք իւրեանց նեղեցին զնս. 42
և խոնարհք եղեն 'ի ներքոյ ձեռաց նց:
*Բազում անգամ փրկեաց զնոսա. և 43
նք դառնացուցին զնա 'ի խորհուրդս
իւրեանց. և կորեան յանօրէնութե
իւրեանց: *Հայեցաւ Տր 'ի նեղութիւն 44
նոցա. 'ի լսել ձայնի աղօթից նոցա:
||2. Օրէ. 30.1.
*||Յիշեաց զուխտ իւր. և զղջացաւ 45
ըստ բազում ողորմութե իւրում:
*ետ զնոսա 'ի գթութիւն առաջի ամ 46
գերչաց նոցա: *Փրկեա զմեզ Տր Ած 47
մր. և ժողովեա զմեզ 'ի հեթանոսաց:
Խոստովան եղիցուք անուան քում սր
բոյ. և պարծիցուք յօրհնութիւն քո:
*Օրհնեալ Տր Ած իՂի յաւիտենից 48
յաւիտենից: Եւ ասասցէ ամենայն
ժողովուրդն. եղիցի՛ եղիցի:

## Ալէլուիա: ՃԶ:

||Յուդ. 13.21.
ԽՈՍՏՈՎԱՆ ԵՂԻ- 1
րուք Տն զի քաղցր է. զի
յաւիտեան է ողորմութիւն նորա:
*Ասասցեն փրկեալք Տն. զորս փր- 2
կեաց 'ի ձեռաց թշնամւոյն: Յամե-
նայն գաւառաց ժողովեաց զնոսա:
*յարևելից՝ և յարևմտից. 'ի հիւսիսոյ՝ 3
և 'ի ծովէ: *Մոլորեցան նոքա յանա- 4
պատի յանջրդի. զճանապարհ՝ և զքա
ղաք բնակութե ոչ գտին: *Քաղ- 5
ցեան. և ծարաւեցան. և անձինք նց
'ի նոսին նուաղեցան: *Աղաղակեցին 6
առ Տր 'ի նեղութե իւրեանց. 'ի վշտաց
նոցա փրկեաց զնս: *Առաջնորդեաց 7
նոցա 'ի ճանապարհ ուղիղ. զի երթի
ցեն 'ի քաղաք բնակութե իւրեանց:
*Խոստովան եղիցին Տն ողորմութեց 8
նր. սքանչելեաց նորա որդւոց մարդ-
կան: *Զի յագեցոյց զանձինս քաղ 9
ցեալս. և զանձինս կարօտեալս լի ա-
րար բարութբ: *Որք նստէին 'ի խա 10
ւարի և 'ի ստուերս մահու. կապեալ
էին յաղքատութե որպէս յերկաթս:
*Զի դառնացուցին զբանն Այ. և 11
զխորհուրդս բարձրելոյն բարկացու-
ցին: *Խոնարհ եղեն 'ի ցաւոց սիրտք 12
նոցա. տկարացան, և ոչոք էր՝ որ օգնէր
նց: *Աղաղակեցին առ Տր 'ի նեղու- 13
թե իւրեանց. 'ի վշտաց նոցա էհան
զնոսա: *Փրկեաց զնս 'ի խաւարէ՝ և 14
'ի ստուերաց մահու. և խզեաց զկա-
պանս նոցա: *Խոստովան եղիցին Տն 15
ողորմութեց նր. սքանչելեաց նր որ-
16 դւոց մարդկան: *Զի փշրեաց զդրունս
պղնձիս. և զնիգս երկաթիս խորտա-
17 կեաց: *Օգնեաց նոցա 'ի ճանապար
հի անօրէնութե իւրեանց. զի վասն
մեղաց իւրեանց խոնարհ եղեն յոյժ:
18 *Յամ կերակրոյ գարշեցին սիրտք նց.
մերձեցան մինչև 'ի դրունս մահու:
19 *Աղաղակեցին առ Տր 'ի նեղութե
իւրեանց. 'ի վշտաց նց ապրեցոյց զնս:
20 *Առաքեաց զբան իւր՝ և բժշկեաց
զնոսա. և փրկեաց զնոսա յապականու
21 թէ իւրեանց: *Խոստովան եղիցին
Տն ողորմութեց նորա. սքանչելեաց
22 նորա որդւոց մարդկան: *Մատուսցեն
նմա պատարագս օրհնութե. և պատ-
մեսցեն զգործս նորա ցնծութբ:
23 *Որք իջանէին 'ի ծով նաւուք. և առ-
նէին զգործս 'ի ջուրս բազումս:
24 *Նոքա տեսին զգործս Տն. և զսքան
չելիս նորա 'ի խորս անդնդոց:
25 *Ասաց՝ և յարեաւ հողմ և մրրիկ. և
26 բարձրացան ալիք նր: *Ելանէին յեր
կինս. և իջանէին յանդունդս. և ան-
ձինք նոցա յանձինս իւրեանց մաշեցան.
27 *Խռովեցան՝ սասանեցան որպէս ար
բեալս. և ամ իմաստութի նոցա ընկ
28 լաւ: *Աղաղակեցին առ Տր 'ի նեղու
թե իւրեանց. 'ի վշտաց նոցա կեցոյց
29 զնս: *Դարձոյց զմրրիկ նր յօդ. և
30 դադարեցին ալիք նր: *ուրախ եղեն՝
զի դադարեցին. և առաջնորդեաց նց
'ի նաւահանգիստ կամաց իւրեանց:
31 *Խոստովան եղիցին Տն ողորմութեց
նր. սքանչելեաց նր որդւոց մարդկան:
32 *Բարձր արասցեն զնա 'ի ժողովս ժո
ղովրդոց. և յաթոռս ծերոց օրհնես-
33 ցեն զնա: *Դարձոյց զգետս 'ի ցամաք.
և զգնացս ջուրց յերկիր ծարաւուտ:
34 *Արար զերկիրն պտղաբեր յաղտաղ
տուկ. վն չարութե բնակչաց նոցա:
35 *Արար զանապատն 'ի ճահիճս ջուրց.
և զերկիրն ծարաւուտ 'ի գնացս ջուրց:
36 *Բնակեցոյց 'ի նմա քաղցեալս. և շի-
նեցին քաղաք բնակութե իւրեանց:
37 *Սարեցին արտս՝ և տնկեցին այգիս.
և արարին պտուղս արմտեաց իւրց:
38 *Օրհնեաց զնոսա՝ և բազմացան յոյժ.
և անասուն նոցա ոչ նուաղեցաւ:
39 *Նուաղեցան նոքա՝ և չարչարեցան,
'ի նեղութէ չարեաց և 'ի վշտաց:
40 *Եհեղ անարգութի 'ի վերայ իշխա-
նաց նոցա. մոլորեցոյց զնոսա յանա-
41 պատի՝ և ոչ 'ի ճանապարհի: *Օգ-
նեաց տնանկին յաղքատութե. առաջ
նորդեաց որպէս խաշին ազգաց նոցա:
42 *||Տեսցեն ուղիղք՝ և ուրախ եղիցին.
ամենայն անօրէն խցցէ զբերան իւր:
||Յոբ. 22.19.

*Ով

43 *Ո՞վ է իմաստուն՝ որ պահեսցէ զայս. եւ 'ի միտ առցէ զողորմութիւնս Տ՟ն:

1 Օրհնութիւն Սաղմոսի Դաւթի: ՃԷ:

Սաղմ. 56. 8.

2 Պատրաստ է սիրտ իմ Ա՟ծ. պատրաստ է սիրտ իմ օրհնել՝ եւ սաղմոս ասել քեզ փառօք իմովք: 3 *Զարթի՛ր փառք իմ. զարթի՛ր սաղմոսիւք եւ օրհնութեամբ. եւ ես զարթեայց առաւօտուց: 4 *Խոստովան եղէց քեզ 'ի ժողովուրդս Տ՟ր. եւ սաղմոս ասացից քեզ յազգս: 5 *Մեծ եղեւ մինչեւ յերկինս ողորմութիւն քո. մինչեւ յամպս է ճշմարտութիւն քո: 6 *Բարձրեալ ես դու յերկինս Ա՟ծ. յամ երկրի են փառք քո: 7 *‖Ո՛րպէս փրկեսցին սիրելիք քո. կեցո՛ աջով քով. եւ լուր մեզ: 8 *Ա՟ծ խօսեցաւ 'ի սրբութեան իւրում. բարձր եղէց՝ բաժանեցից զՍիւքեմ. եւ զՀովիտս յարկաց չափեցից: 9 *Իմ է Գաղաադ՝ եւ իմ է Մանասէ. Եփրեմ հզօրիչ գլխոյ իմոյ: Յուդա թագաւոր իմ. 10 *եւ Մովաբ աւազան յուսոյ իմոյ: Յեդովմ ուղղեցից զգնացս իմ. եւ ինձ այլազգիք հնազանդ եղեն: 11 *Ո՞ տարցի զիս 'ի քաղաք ամուր. կամ ո՞ առաջնորդեսցէ ինձ մինչեւ յԵդովմ: 12 *Եթէ ոչ դու Ա՟ծ. որ մերժեցեր զմեզ. եւ ոչ ելեր Ա՟ծ ընդ զօրս մեր: 13 *Տո՛ւր մեզ զօգնութիւն 'ի նեղութեան. զի սուտ է փրկութիւն մարդոյ: 14 *Ա՟ւ արասցուք զզօրութիւն. եւ նա յամօթ արասցէ զթշնամիս մեր:

‖ Սաղ. 59. 7.

'Ի կատարած, Սաղմոս Դաւթի: 1

ՃԸ:

2 Ա՟ծ օրհնութեան իմոյ մի՛ լռեր. զի բերան մեղաւորի՝ բերան նենգաւորի բացաւ 'ի վ՟ր իմ: Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ: 3 *եւ բանիւք ատելութեան պաշարեցին զիս: Մարտեան ընդ իս 'ի տարապարտուց. 4 *փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս. այլ ես յաղօթս կայի: 5 *Հատուցին ինձ չար փոխանակ բարւոյ. ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ: 6 *Կացո՛ 'ի վ՟ր ն՟ր մեղաւոր. սատանայ կացցէ ընդ աջմէ ն՟ր: 7 *'Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ. եւ աղօթք ն՟ր 'ի մեղս դարձցին: 8 *Եղիցին աւուրք նորա նուաղք. ‖ եւ զայցելութիւն ն՟ր զայն այլ տարցի: 9 *Եղիցին որդիք ն՟ր որբք. եւ կին ն՟ր այրի. 10 *սասանեսցին՝ փոփոխեսցին. որդիք ն՟ր մուրօղք եղիցին՝ եւ ելցեն 'ի բնակութեան իւրեանց: 11 *Քննեսցէ փոխատուն զամ ինչս նորա. յափշտակեսցեն օտարք զվաստակս նորա: 12 *Մի՛ գտցի օգնական նմա. եւ մի՛ որ ողորմես-

‖ Յոհ. 17. 12. Գործ. 1. 20.

գթ.

-ցի 'ի վերայ որբոց ն՟ր: 13 *Եղիցին որդիք ն՟ր 'ի սատակումն. եւ յազգէ ջնջեսցի անուն ն՟ր: 14 *Յիշեսցին մեղք հօր ն՟ր առաջի Տ՟ն. եւ մեղք մօր նորա մի՛ ջնջեսցին: 15 *եւ եղիցին առաջի Տ՟ն յամ ժամ: 16 *Սատակեսցի յերկրէ յիշատակ նորա. փոխանակ զի ոչ յիշեաց 17 առնել զողորմութիւն: *Հալածեաց զայր աղքատ՝ եւ զտնանկ. սպանանել 18 զայն՝ որ խոնարհ է սրտիւ: *Սիրեաց զանէծս՝ եւ եկեսցէ նմա. ոչ կամեցաւ զօրհնութիւն՝ հեռի եղիցի 'ի նմանէ: Զգեցաւ զանէծս որպէս հանդերձ. մտցէ ո՛րպէս ջուր 'ի փոր ն՟ր. ո՛րպէս ձէթ ընդ 19 ոսկերս նորա: *Եղիցի նմա ո՛րպէս հանդերձ՝ զի ագանի. ո՛րպէս գօտի՝ որ ածի 20 հանապազ ընդ մէջ իւր: *Այս գործ է այնոցիկ՝ որք չարախօս կային զինէն առ Տ՟ր. եւ որք խօսէին չար զանձնէ 21 իմմէ: *Այլ դու՝ Տ՟ր Տ՟ր. արա՛ ընդ իս ըստ անուան քում. զի քաղցր է ողորմութիւն քո. եւ փրկեա՛ զիս: 22 *զի աղքատ՝ եւ տնանկ եմ ես: Սիրտ 23 իմ խռովեցաւ 'ի փորի իմում: *եւ ես ո՛րպէս ստուեր 'ի խոնարհել իմում պակասեցայ. եւ թօթափեցայ ո՛րպէս մարախ: 24 *Ծունկք իմ տկարացան 'ի պահոց. եւ մարմին իմ այլագունեցաւ յիւղոյ: 25 *Եղէ ես նախատ նոցա. տեսին զիս՝ եւ շարժեցին զգլուխս իւրեանց: 26 *Օգնեա՛ ինձ Տ՟ր Ա՟ծ իմ. եւ փրկեա՛ 27 զիս ըստ ողորմութեան քում: *Ծանիցեն՝ զի ձեռն քո այս է. եւ դու Տ՟ր ա-28 րարեր զայս: *Նոքա անիծանիցեն՝ եւ դու օրհնեսցես. որք յարուցեալք են 'ի վերայ իմ՝ զամօթ կրեսցեն. այլ ծառայ քո ուրախ եղիցի 'ի քեզ: 29 *Զգեցցին զամօթ՝ որք չարախօս կային զինէն. արկցեն ո՛րպէս զկրկնոց զա-30 մօթ իւրեանց զիւրեամբք: *Այլ ես խոստովան եղէց առ Տ՟ր յոյժ. բերանով իմով 'ի մէջ բազմաց օրհնեցից 31 զքեզ: *Զի եկաց նա ընդ աջմէ տնանկիս. փրկել զիս յայնցանէ՝ որք հալածեն զանձն իմ:

1 Սաղմոս Դաւթի: ՃԹ:

Ասաց ‖ Տ՟ր ցՏ՟ր իմ, նի՛ստ ընդ աջմէ իմմէ. մինչեւ եդից զթշնամիս քո 2 պատուանդան ոտից քոց: *Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ Տ՟ր 'ի Սիոնէ. տիրեսցես դու 'ի մէջ թշնամեաց 3 քոց: *Ընդ քեզ է սկիզբն յաւուր զօրութեան. 'ի վայելչութիւն սրբոց քոց՝ յարգանդէ յառաջ քան զարուսեակ 4 ծնայ զքեզ: *‖ Երդուաւ Տ՟ր՝ եւ ո՛չ եւս զղջասցի. թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի.

‖ Մատթ. 22. 44. Գործ. 2. 34. Ա. Կորն. 15. 25. Եբրայ. 1. 13. և 10. 13. ‖ Յոհ. 12. 34.

> Եբրայ. 5.6. և 7. 17.

* և Տր ընդ աջմէ քումմէ: Խորտա- 5
կեսցէ յաւուր բարկութե զթագաւո- 6
րս. * դատեսցէ զհեթանոսս՝ և բա-
զում արասցէ զհարուածս. և խորտա
կեսցէ զգլուխս բազմաց յերկրի:
* Յուղխից 'ի ճանապարհի արբցէ. վսն 7
այնորիկ և բարձր արասցէ զգլուխս:

## Ալէլուիայ: ՃԺ:

Խոստովանն եղէց քեզ Տր բոլորով 1
սրտիւ իմով 'ի խորհուրդս ուղ-
ղոց 'ի ժողովս: * մեծ են գործք Տն 2
և քննեալ են յամի կամք նորա:
* Խոստովանութի և մեծ վայելչութի 3
են գործք նր. արդարութի նր մնայ
յաւիտեանս յաւիտենից: * Յիշատակ 4
արար սքանչելեաց իւրոց. ողորմած՝
գթած է Տր: * կերակուր տայ երկիւ- 5
ղածաց իւրոց: Յիշեաց յաւիտենից
զուխտ իւր. * զզօրութի գործոց իւր 6
ոց պատմեաց ժողովրդեան իւրում:
* Տալ նմ զժառանգութի հեթանո- 7
սաց: և գործք ձեռաց նորա արդարու-
թի, և իրաւունք են: * Հաւատարիմ 8
են յամի պատուիրանք նորա. հաստա-
տեալ են յաւիտեանս յաւիտենից.
արարեալ են ճշմարտութբ և ուղղու-
թբ: * Փրկութի առաքեաց Տր ժողո 9
վրդեան իւրում. պատուիրեաց յաւի-
տենից զուխտ իւր. նր, և ահեղ է ա-
նուն նորա: * ‖Սկիզբն զգօնութե եր 10
կիւղ Տն. իմաստութի բարի ամենե
ցուն՝ որք առնեն զնա. օրհնութի նր
մնայ յաւիտեանս յաւիտենից:

> ‖Առակ 1. 7: և 9.10. Սիրաք. 1.16.

## Ալէլուիայ. Վերադարձութե Անգեայ. և Զաքարեայ: ՃԺԱ:

Երանեալ է այր՝ որ երկնչի 'ի Տէ. 1
զպատուիրանս նր նա կամի յոյժ:
* Հզօր եղիցի յերկրի զաւակ նորա. և 2
ազգ ուղղոց օրհնեսցի: * Փառք՝ և 3
մեծութի են 'ի տան նր. արդարութի
նորա մնայ յաւիտեանս յաւիտենից:
* Ծագեաց 'ի խաւարի լոյս ուղղոց. 4
ողորմած՝ գթած՝ և արդար է Տէր:
* Քաղցր այր ողորմի՝ և տայ փոխ. յօ 5
րինէ զբանս իւր 'ի դատաստանի:
* զի յաւիտեան նա մի սասանեսցի: 6
* Յիշատակ յաւիտենից եղիցի ար- 7
դարն. 'ի համբաւէ չարէ նա մի երկի-
ցէ: Պատրաստ է սիրտ նր յուսալ առ
Ած: * Հաստատեալ է սիրտ նր՝ և նա 8
մի երկիցէ. մինչև տեսցէ 'ի թշնամիս
իւր: * ‖Սփռեաց՝ և ետ աղքատաց. ար 9
դարութի նր մնայ յաւիտեանս յաւի-
տենից. և եղջիւր նորա բարձր եղիցի
փառօք: * Մեղաւորն տեսցէ՝ և բար 10
կասցի. զատամունս իւր կրճտեսցէ՝
և հալեսցի. և ցանկութի մեղաւորաց
կորիցէ:

> ‖2. Կորն. 9. 9.

## Ալէլուիայ: ՃԺԲ:

1 Օրհնեցէք մանկունք զՏր. և օրհնե
2 ցէք զանուն Տն: * ‖Եղիցի ա-
նուն Տն օրհնեալ. յայսմհետէ մինչև
3 յաւիտեան: * ‖Յարևելից մինչև 'ի
մուտս արևու. օրհնեալ է անուն Տն:
4 * Բարձր է 'ի վերայ ամ ազգաց Տր.
5 և յերկինս են փառք նր: * Ով է որպ Տր
Ած մեր՝ 'ի բարձունս բնակեալ:
6 * և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկ
7 րի: * Յարուցանէ զաղքատս յերկրէ.
և բարձր առնէ զտառապեալս յաղ
8 բեաց: * Նստուցանէ զնա իշխանս.
ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ:
9 * Բնակեցուցանէ զամուլն 'ի տան ու-
րախամիտ. որպէս մայր որդւովք բեր
կրեալ:

> ‖Դանիէ. 2.20. ‖Մաղաք. 1.11.

## Ալէլուիայ: ՃԺԳ:

1 Յելանելն Իէի յեգիպտոսէ. տանն
յակոբայ 'ի ժողովրդենէ օտարա
2 գեաց: * Եղև հրէաստան սրբութիւն
3 նր. և Իէլ իշխանութի նր: * Ծով ե-
տես՝ և փախեաւ. և յորդանան անդ-
4 րէն դարձաւ: * Լերինք ցնծացին որպ
զխոյս. և բլուրք որպէս զգառինս մա
5 քեաց: * Զի՞ է քեզ ծով. զի՞ տեսեր՝ և
փախեար. կամ դու յորդանան՝ զի՞ դար
6 ձար անդրէն: * Լերինք ցնծացէք որպ
զխոյս. և բլուրք որպ գառինս մաքեաց:
7 * Յերեսաց Տն սասանեցաւ երկիր.
8 յերեսաց Ած յակոբայ: * Որ դարձոյց
զվէմն 'ի վտակս ջուրց. և զապառաժն
յաղբերակունս:
1 * Մի՛ մեզ Տէր՝ մի՛ մեզ. այլ անուան
2 քում տուր զփառս: * վսն ողորմութե
և ճշմարտութե քո: Մի՛ երբեք ասա
ցեն 'ի հեթանոսս. թէ ո՞ւր է Ած նց:
3 * Ած մեր յերկինս և յերկրի. զամ զոր
4 ինչ կամեցաւ՝ և արար: * ‖Կուռք հե
թանոսաց ոսկի և արծաթ են. ձեռա
5 գործք են որդւոց մարդկան: * Բերան
ունին՝ և ո՛չ խօսին. աչս ունին՝ և ո՛չ
6 տեսանեն: * Ականջս ունին՝ և ո՛չ լսեն
7 ունչս ունին՝ և ո՛չ հոտոտեն: * Ձեռս
ունին, և ո՛չ շօշափեն. ոտս ունին, և
ո՛չ գնան. և ո՛չ գոյ բարբառ 'ի կոկորդս
8 նոցա: * Նման նց եղիցին՝ որք արա-
րին զնս. ամենեքեան՝ որք յուսացեալ
9 են 'ի նոսա: * Տուն Իէի յուսացաւ 'ի
Տր. օգնական և ընդունող է նոցա:
10 * Տուն ահարոնի յուսացաւ 'ի Տր. օգ-
11 նական և ընկերող է նոցա: * Երկիւղ
ածք Տն յուսացան 'ի Տր. օգնական
12 և փրկիչ է նոցա: * Յիշեաց զմեզ Տր
և

> ‖Ելից. 13.3. ‖Սաղ. 134.15. Իմաստ. 15.15.

և օրհնեաց զմեզ . օրհնեաց Տր̃ զտունն
իղ̃ի . օրհնեաց Տր̃ զտունն Ահարոնի :
* Օրհնեաց Տէր զերկիւղածս իւր . 13
զփոքրկունս և զմեծամեծս : * Յաւել 14
ցէ 'ի ձեզ Տր̃ 'ի ձեզ և յորդիս ձեր :
* Օրհնեալ էք դուք 'ի Տն̃է . որ արար 15
զերկինս և զերկիր : * Երկինք երկնից 16
Տն̃ են . և զերկիրս ետ որդւոց մարդ_
‖ Բարու. 2.17. կան : * ‖ Ոչ թէ մեռեալք օրհնեսցեն 17
զքեզ Տր̃ . և ոչ ամենեքեան ոյք իջա
նեն 'ի դժոխս : * Այլ կենդանիքս 18
օրհնեսցուք զՏր̃ . յայսմհետէ մինչև
յաւիտեան :

## Ալէլուիայ : ՃԺԴ :

Սիրեցի . զի լուիցէ Տր̃ զձայն աղօ 1
թից իմոց : * զի խոնարհեցոյց 2
զունկն իւր առ իս . և ես յաւուրս իմ
կարդացից առնա : * Շրջեցան զինև 3
երկունք մահու . և վիշտք դժոխոց
գտին զիս : Օնեղութի̃ և զանձկու_
թի̃ գտի . * և զանուն Տն̃ կարդացի : 4
Ո՛ Տր̃ փրկեա՛ զանձն իմ . * ողորմած 5
և արդար է Տր̃ Ա̃ծ մեր՝ ողորմի : * պա 6
հէ զտղայս Տէր : Ես խոնարհ եղէ՝ և
Տր̃ կեցոյց զիս : * դարձ անձն իմ 'ի 7
հանգիստ քո . զի Տր̃ օգնեաց քեզ :
* Փրկեաց զանձն իմ 'ի մահուանէ . 8
զաչս իմ յարտասուաց . և զոտս իմ 'ի
գայթագղութէ̃ : * հաճոյ եղէց առա 9
ջի Տն̃ յերկրին կենդանեաց :

## Ալէլուիայ : ՃԺԵ :

Բ. Կորն. 4.13. Հաւատացի՝ զոր և խօսեցայ . և ես 10
խոնարհ եղէ յոյժ : * ‖ Ես ասացի 11
‖ Հռովմ. 3. 4. 'ի զարմանալ իմում . թէ ամ̃ մարդ
սուտ է : * Զի՞նչ տաց տրիտուր Տն̃ . 12
ընդ ամ̃ զոր ետ ինձ : * Զբաժակ 13
փրկութե̃ ընկալայց . և զանուն Տն̃
կարդացից : * Զաղօթս իմ Տն̃ տաց . 14
առաջի ամենայն ժողովրդեան նորա :
* Պատուական է առաջի Տն̃ մահ սրբ 15
‖ Իմաս. 9. 5. բոց իւրոց . * ‖ ո՛ Տր̃, ես ծառայ քո եմ . 16
ծառայ և որդի աղախնոյ քոյ :
* Հատեր զկապանս իմ . քեզ մատուցից 17
պատարագս օրհնութե̃ . և զանուն Տն̃
կարդացից : * Զաղօթս իմ Տն̃ տաց 18
առաջի ամ̃ ժողովրդեան նորա : * 'ի 19
գաւիթս տան Տն̃ և 'ի մէջ քո Եր̃մ :

## Ալէլուիայ : ՃԺԶ :

‖ Հռովմ. 15. 11. Օրհնեցէք ‖ զՏր̃ ամ̃ ազինք . գովե_ 1
ցէք զնա ամենայն ժողովուրդք :
‖ Յովհ. 12.34. * ‖ Զօրացաւ ողորմութի̃ նորա 'ի վերայ 2
մեր . Ճշմարտութի̃ Տեառն մնացէ
յաւիտեան :

## Ալէլուիայ . ՃԺԷ :

1 Խոստովան եղերուք Տն̃ զի բարի է .
զի յաւիտեան է ողորմ նորա :
2 * Ասասցէ՛ տուն իղ̃ի . զի յաւիտեան է
3 ողորմ նորա : * Ասասցէ տուն Ահա_
րոնի . զի յաւիտեան է ողորմ նորա :
4 * Ասասցեն երկիւղածք Տն̃ . զի յաւի_
5 տեան է ողորմ նր̃ : * 'Ի նեղութե̃ կար_
դացի առ Տր̃ . և լուաւ ինձ յանդորր :
6 * Տէր է իմ օգնական . և ես ո՛չ եր_
կեայց . զի՞ արասցէ ինձ մարդ :
7 * ‖ Տր̃ է իմ օգնական . և ես տեսից 'ի ‖ Եբրայ. 13.6.
8 թշնամիս իմ : * Բարի է յուսալ 'ի Տէր՝
9 քան յուսալ 'ի մարդիկ . * բարի է յու
սալ 'ի Տէր՝ քան յուսալ յիշխանս :
10 * Ամենայն ազինք շրջեցան զինև . և
անուամբ Տն̃ յաղթեցի նոցա :
11 * Շրջելով շրջեցան զինև . պաշարե
ցին զիս 'ի միասին . և անուամբ Տն̃
12 վանեցի զնս̃ : * Շրջեցան զինև որպ մե
ղուք . վառեցան՝ բորբոքեցան որպէս
փուշք 'ի հուր . և անուամբ Տն̃ մեր_
13 ժեցի զնս̃ : * 'Ի մերժելն դրդուեցայ՝
և եղէ մերձ 'ի գլորիլ . և Տր̃ ընկալաւ
14 զիս : * ‖ Զօրութի̃ իմ . և օգնութի̃ ‖ Ելից. 15. 2.
իմ Տէր . և եղև ինձ 'ի փրկութի̃ :
15 * Ձայն ցնծութե̃ փրկութե̃ . 'ի յարկս Եսայ. 12.2.
արդարոց : Աջ Տն̃ արար զզօրութի̃ :
16 * աջ Տն̃ բարձր արար զիս . և աջ Տն̃
17 արար զզօրութի̃ : * Ոչ մեռայց . այլ
կեցից, և պատմեցից զգործս Տն̃ :
18 * Խրատելով խրատեաց զիս Տր̃ . և 'ի
19 մահ ոչ մատնեաց : * Բացէք ինձ զդր
ունս արդարութե̃ . զի մտից ընդ այն՝
20 և խոստովան եղէց Տն̃ : * Այս դուռն
Տն̃ է . և արդարք մտանեն ընդ սա :
21 * Խոստովան եղէց քեզ Տր̃՝ զի լուար
ինձ . և եղեր ինձ 'ի փրկութի̃ :
22 * ‖ Վէմն՝ զոր անարգեցին շինօղք . ‖ Եսայ. 28. 16.
23 նա եղև գլուխ անկեան : * 'Ի Տն̃է եղև
այս . և է սքանչելի առաջի աչաց մե_ Մատ. 21.42.
24 րոց : * Այս օր է՝ զոր արար Տր̃ . ե_
կայք, ցնծասցուք՝ և ուրախ եղիցուք Մարկ. 12.10.
25 'ի սմա : * Ո՛ Տր̃ փրկեա՛ ո՛ Տր̃ առաջ_
26 նորդեա՛ : * ‖ օրհնեալ որ գալոց է յա_ Ղուկ. 20. 17.
նուն Տն̃ . և օրհնեցաք զքեզ 'ի տա_
27 նէ Տն̃ : * Տր̃ Ա̃ծ մեր երևեցաւ մեզ . Գործ. 4.11.
արարէք տօնս ուրախութե̃ կանխաւ
28 մինչև յանկիւնս սեղանոյ : * Ա̃ծ իմ Հռովմ. 9. 33.
ես դու՝ խոստովան եղէց քեզ . Ա̃ծ Ա. Պետ. 2. 7.
իմ ես դու՝ և բարձր արարից զքեզ :
29 * Խոստովան եղէց քեզ Տր̃՝ զի լուար
ինձ . և եղեր ինձ 'ի փրկութի̃ : ‖ Մատթ. 21.9.
Խոստովան եղերուք Տն̃ զի բարի է .
զի յաւիտեան է ողորմ նորա :

## Ալէլուիա ։ ՃԺԸ ։

### Ա. ԱԼԷՓ ։ 1

1 Երանեալ են ամբիծք ՚ի ճանապարհի ․ որք գնան յօրէնս Տն ։ 2 *Երանի՛ որք քննեն զվկայութիւն նր ․ բոլորով սրտիւ իւրեանց խնդրեսցեն զնա ։ 3 *Զի ոչ թէ՝ որք գործեն զանօրէնութիւն ․ ՚ի ճանապարհս նր գնասցեն ։ 4 *Դու պատուիրեցեր զպատուիրանս քո ՚ի պահել ինձ յոյժ ։ 5 *Օչ թէ յաջողեալ էին ինձ ճանապարհք իմ ՚ի պահել ինձ զարդարութիւս քո ։ 6 *Յայնժամ ես ոչ ամաչէի ՚ի զգուշանալ ինձ ՚ի պատուիրանս քո ։ 7 *Խոստովան եղէց քեզ Տր յուղղութիւն սրտի իմոյ ․ որպէս ուսայց զիրաւունս արդարութեան քոյ ։ 8 *Զիրաւունս քո պահեցից ․ և մի՛ թողուր զիս մինչև իսպառ ։

### Բ. ԲԷԹ ։ 2

9 Իւ՞ ուղղեսցէ երիտասարդ զճանապարհս իւր ․ այլ ՚ի պահել զբանս քո ։ 10 *Բոլորով սրտիւ իմով խնդրեցից ըզ քեզ ․ մի՛ մերժեր զիս ՚ի պատուիրանաց քոց ։ 11 *Ի սրտի իմում թաքուցի զբանս քո ․ որպ զի մի՛ մեղայց քեզ ։ 12 *Օրհնեալ ես դու Տր ․ և ուսո՛ ինձ զարդարութիւս քո ։ 13 *Շրթամբք իմովք պատմեցից զամ իրաւունս բերանոյ քոյ ։ 14 *Ի ճանապարհս վկայութեանց քոց զուարճացայ ․ որպ յամ մեծութեան ։ 15 *Ի պատուիրանս քո հոգացայ ․ և զգուշացայ ՚ի ճանապարհս քո ։ 16 *Զիրաւունս քո խօսեցայց ․ և ո՛չ մոռացայց զբանս քո ։

### Գ. ԳԱՄԻԼ ։ 3

17 Հատո՛ ծառայի քում ․ զի կեցից՝ և պահեցից զբանս քո ։ 18 *Զարթո՛ զաչս իմ ․ և նայեցայց ՚ի սքանչելիս օրինաց քոց ։ 19 *Պանդուխտ եմ ես յերկրի ․ մի՛ թաքուցաներ յինէն զպատուիրանս քո ։ 20 *Փափագեաց անձն իմ ՚ի ցանկալ ինձ յիրաւունս քո յամ ժամ ։ 21 *Սաստեցեր ամբարտաւանից ․ անիծեալ որք խոտորեցան ՚ի պատուիրանաց քոց ։ 22 *Ի բաց արա յինէն զնախատինս՝ և զարհամարհանս ․ զի զվկայութիւս քո խնդրեցի ։ 23 *Քանզի նստան իշխանք՝ և չարախօսէին զինէն ․ այլ ծառայ քո խորհէր յիրաւունս քո ։ 24 *Զի վկայութիւնք քո խօսք իմ էին ․ և խորհուրդք իմ արդարութիւն քո ։

### Դ. ԴԱԼԷԹ ։ 4

25 Մերձեցաւ անձն իմ ՚ի հող ․ Տր կեցո՛ զիս ըստ բանի քում ։ 26 *Զճանապարհս իմ պատմեցի քեզ՝ և լուար ինձ ․ ուսո՛ ինձ զարդարութիւս քո ։ 27 *Ի ճանապարհս արդարութեանց քոց իմաստու՛ն արա զիս ․ և քննեցից զսքանչելիս քո ։ 28 *Տքնեցաւ անձն իմ առ ՚ի ձանձրանալ ․ հաստատեա՛ զիս ՚ի բանս քո ։ 29 *Զճանապարհս մեղաց ՚ի բա՛ց արա յինէն ․ և յօրէնս քո ողորմեա՛ ինձ ։ 30 *Զճանապարհս ճշմարտութեան քոյ ընտրեցի ․ և զիրաւունս քո ես ո՛չ մոռացայ ։ 31 *Մերձեցայ ես ՚ի վկայութիւս քո Տր՝ մի՛ յամօթ առներ զիս ։ 32 *Ի ճանապարհս պատուիրանաց քոց ընթացայց ․ զի անդորր արարեր սրտի իմոյ ։

### Ե. ՀԷ ։ 5

33 Օրէնսդի՛ր արա զիս Տր ՚ի ճանապարհս իրաւանց քոց ․ և խնդրեցից զնա յամ ժամ ։ 34 *Իմաստու՛ն արա զիս՝ և քննեցից զօրէնս քո ․ և պահեցից զնա բոլորով սրտիւ իմով ։ 35 *Առաջնորդեա՛ ինձ ՚ի շաւիղս պատուիրանաց քոց ․ զի ընդ նոսա հաճեցայ ։ 36 *Խոնարհեցո՛ զսիրտ իմ ՚ի վկայութիւս քո ․ և մի՛ յագահութիւն ։ 37 *Դարձո՛ զաչս իմ, զի մի՛ տեսից զնանրութիւն ․ ՚ի ճանապարհս քո կեցո՛ զիս ։ 38 *Հաստատեա՛ ծառայի քում ․ զբան քո յերկիւղ քո ։ 39 *Հա՛ն յինէն զնախատինս՝ զոր կարծեցի ․ զի դատաստանք քո քաղցր են ։ 40 *Ահա ցանկացայ պատուիրանաց քոց ․ յարդարութեան քում կեցո՛ զիս ։

### Զ. ՎԱՒ ։ 6

41 Եկեսցէ ՚ի վր իմ ողորմութիւն քո Տր ․ և փրկութիւն քո ըստ բանի քում ։ 42 *Տաց պատասխանի՝ որք նախատեն զիս բանիւք ․ զի ես ՚ի բանս քո յուսացայ ։ 43 *Մի՛ ՚ի բացէ առներ ՚ի բերանոյ իմմէ զբան ճշմարտութեան մինչև յոյժ ․ զի յիրաւունս քո յուսացայ ։ 44 *Պահեցից զօրէնս քո յամ ժամ ․ յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից ։ 45 *Գնայի ես յանդորրու ․ զի զպատուիրանս քո խնդրեցի ։ 46 *Խօսէի զվկայութիւս քո առաջի թագաւորաց ․ և ո՛չ ամաչէի ։ 47 *Խորհէի ՚ի պատուիրանս քո ․ զոր սիրեցի ։ 48 *Ամբարձի զձեռս իմ ՚ի պատուիրանս քո , զոր սիրեցի ․ և խորհէի յարդարութեան քում ։

### Է. ԶԱՅՆ ։ 7

49 Յիշեա՛ զբան քո ծառայի քոյ ․ յոր յուսացուցեր զիս ։ 50 *Սա՛ մխիթարեսցէ զիս ՚ի խոնարհութեան իմում ․ զի բան քո կեցոյց զիս ։ 51 *Ամբարտաւանք անիրաւեցան յիս յոյժ ․ այլ յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ ։ 52 *Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տր ․ և մխիթարեցայ ։ 53 *Տրտմութիւն կալաւ զիս ՚ի մեղաւորաց ․ որք թողին զօրէնս քո ։ 54 *Գովելիք էին ինձ իրաւունք քո ․ ՚ի տեղւոջ պանդխտութեան իմոյ ։

*Յի–

55 *Յիշեցի 'ի գիշերի զանուն քո Տր̄ ․ և 56 պահեցի զօրէնս քո ։ *Այս եղև ինձ ճանապարհ 'ի կեանս ․ զի զարդարութիս քո խնդրեցի ։

## Ը. ՃԷԹ։ 8

57 Բաժին իմ ես դու Տր̄՝ ասացի պա58 հել զօրէնս քո ։ *Աղաչեցի զերեսս քո բոլորով սրտիւ իմով ․ ողորմեա՛ ինձ ըստ բանի քում ։
59 *Խորհեցայ 'ի ճանապարհս իմ․և դարձուցի զոտս իմ 'ի վկայութիս քո ։
60 *Պատրաստեցայ՝ և ո՛չ խռովեցայ ․ զի պահեցից զպատուիրանս քո ։
61 *Տուուանք մեղաց պատեցան զինև ․ այլ զօրէնս քո ես ոչ մոռացայ ։
62 *'Ի մէջ գիշերի յառնէի խոստովան լինել առ քեզ՝ վս̄ իրաւանց արդարութե՛ քոյ ։ 63 *Հաղորդ էի ես ամ̄ երկիւղածաց քոց ․ ոյք պահէին զպատուիրանս քո ։ 64 *Ողորմութբ̄ Տն̄ լի՛ եղև երկիր ․ զարդարութիս քո ուսո՛ ինձ ։

## Թ. ՏԷԹ։ 9

65 Քաղցրութի արարեր ընդ ծառայի քում Տր̄՝ ըստ բանի քում ։
66 *Զքաղցրութի՛ և զխրատ՝ և զգիտութի ուսո՛ ինձ ․ զի 'ի պատուիրանս քո ես հաւատացի ։ 67 *Մինչև խոնարհ հեալէի ես՝ մեղայ ․ վս̄ այսորիկ զբանս քո պահեցի յոյժ ։ 68 *Քաղցր ես դու Տր̄ ․ և քաղցրութբ̄ քով ուսո՛ ինձ զարդարութիս քո ։ 69 *Բազմացան յիս անիրաւութիք ամբարտաւանից ․ այլ ես բոլորով սրտիւ իմով քննեցի զպատուիրանս քո ։ 70 *Մածեաւ որպէս կաթն սիրտ նոցա ․ այլ ես զօրէնս քո խոկեցայ ։ 71 *Բարի է ինձ ․ զի խոնարհ արարեր զիս ․ ո՛րպ զի ուսայց զարդարութիս քո ։ 72 *Բարիք են ինձ օրէնք բերանոյ քոյ՝ քան զհազարս ոսկւոյ և արծաթոյ ։

## Ժ. ՅՈԴ։ 10

73 Ձեռք քո արարին․և ստեղծին զիս ․ իմաստուն արա զիս՝ և ուսայց զպատուիրանս քո ։ 74 *Երկիւղածք քո տեսցեն զիս՝ և ուրախ եղիցին ․ զի ես 'ի բանս քո յուսացայ ։ 75 *Ծանեայ Տր̄՝ զի արդարութբ̄ են դատաստանք քո ․ յիրաւի խոնարհեցուցեր զիս ։ 76 *Եղիցի՛ ողորմութի քո 'իմխիթարել զիս՝ ըստ բանի քում՝ զծառայս քո ։
77 *Եկեսցեն յիս գթութիք քո՝ և կեցից ․ զի օրէնք քո խոկք իմ էին ։
78 *Ամաչեսցեն ամբարտաւանք՝ որք 'ի տարապարտուց անիրաւեցան յիս ․ այլ ես հոգացայց 'ի պատուիրանս քո ։
79 *Դարձցին առ իս երկիւղածք քո․ ոյք ճանաչեն զվկայութիս քո ։ 80 *Եղիցի

սիրտ իմ ամբիծ յարդարութե՛ քում․ զի մի՛ ամաչեցից ։

## Ի. ԿԱՓ։ 11

81 Կարօտացաւ անձն իմ 'ի փրկութիս քո․ զի ես 'ի բանս քո յուսացայ ։
82 *Սպասեցին աչք իմ բանի քում․ ասացի, երբ մխիթարեսցես զիս ։
83 *Եղէ ես որպէս տիկ 'ի պարզի ․ զի զարդարութիս քո ես ո՛չ մոռացայ ։
84 *Քանի՛ ինչ են աւուրք ծառայի քոյ ․ Ե՞րբ արասցես ինձ իրաւունս 85 'ի հալածչաց իմոց ։ *Պատմեցին ինձ անօրէնք զխորհուրդս՝ այլ ո՛չ որպէս 86 զօրէնս քո ։ *Ամ̄ պատուիրանք քո ճշմարիտք են ․ ինանիր հալածեցին 87 զիս՝ օգնեա՛ ինձ ։ *Փոքր մի ևս կորուսանէին զիս յերկրի ․ այլ ես ո՛չ 88 թողի զպատուիրանս քո ։ *Ըստ ողորմութե՛ քում կեցո՛ զիս ․ և պահեցից զվկայութիս բերանոյ քոյ ։

## Լ. ԼԱՄԻԴ։ 12

89 Յաւիտեան Տր̄ բանն քո կայ յերկինս ․ 90 *յազգէ մինչև յազգ է ճշմարտութի քո ։ Հաստատեցեր զերկիր․և 91 կայ՝ *Հրամանի քում ։ Ամ̄այ տիւ ․ 92 ամենեքեան ծառայք քո են ։ *Եթէ ոչ օրէնք քո խոկք իմ էին ․ կանխաւ ևս արդեօք կորուսեալ էի 'ի խոնարհու93 թե՛ իմում ։ *Յաւիտեան ես ոչ մոռացայց զարդարութիս քո ․ զի նոքօք 94 կեցուցեր զիս ։ *Քո եմ ես՝ և կեցո՛ զիս ․ զի զարդարութիս քո խնդրեցի ։
95 *Ինձ սպասեցին մեղաւորք 'ի կորուսանել զիս ․ զի զվկայութիս քո ես 96 'ի միտ առի ։ *Ամ̄ կատարածի տեսի զվախճան ․ յոյժ անդորր են ինձ պատուիրանք քո ։

## Խ. ՄԻՄ։ 13

97 Որպէս սիրեցի զօրէնս քո ․ զօրհանապազ խոկք իմ էին ։ 98 *Քան զթշնամիս իմ իմաստուն արարեր զիս 'ի պատուիրանս քո ․ զի յաւիտեան իմ 99 էին ։ *Քան զամ̄ ուսուցիչս իմ իմաստուն եղէ ․ զի վկայութիք քո խոկք 100 իմ էին ։ *Քան զծերս իմաստուն եղէ ․ զի զպատուիրանս քո քննեցի ։
101 *Յամ̄ ճանապարհաց չարաց արգելի զոտս իմ․ ո՛րպ զի պահեցից զբանս քո ։
102 *Յիրաւանց քոց ես ոչ խոտորեցայ ․ զի դու օրէնսդէտ արարեր զիս ։
103 *Որպէս զի քաղցր են 'ի քիմս իմ բանք քո ․ քան զմեղր բերանոյ իմոյ ։
104 *'Ի պատուիրանաց քոց իմացեալ ատեցի զամ̄ ճանապարհս չարեաց ․ զի դու օրէնսդէտ արարեր զիս ։

## Ծ. ՆՈՒՆ։ 14

105 Ճրագ է բանն քո ոտից իմոց ․ և 106 լոյս տայ շաւղաց իմոց ։ *Երդուայ՝

և

և հաստատեցի. զի պահեցից զամ իրաւունս արդարութեան քոյ ։ 107 * Խոնարհ եղէ մինչև յոյժ. Տր կեցո զիս ըստ բանի քում ։ 108 * Ընդ կամս բերանոյ իմոյ հաճեաց Տէր. և զիրաւունս քո ուսո ինձ ։ 109 * Անձն իմ ՚ի ձեռս քո յամ ժամ. և զօրէնս քո ես ոչ մոռացայ ։ 110 * Եդին ինձ մեղաւորք զորոգայթ. ՚ի պատուիրանաց քոց ես ոչ մոլորեցայ ։ 111 * Ժառանգեցի զվկայութիւնս քո յաւիտեան. զի ցնծութիւն է սրտի իմոյ ։ 112 * Խոնարհեցուցի զսիրտ իմ առնել զարդարութիւնս քո յաւիտեան՝ վասն հատուցման ։

## Կ ՍԱՄԵՔ ։ 15

113 Զանօրէնս ատեցի. և զօրէնս քո սիրեցի ։ 114 * Օգնական և փրկիչ իմ ես դու. և ես ՚ի բանս քո յուսացայ ։ 115 * ՚Ի բաց եղերուք յինէն չարք. և քննեցից զպատուիրանս Այ իմոյ ։ 116 * Օգնեա ինձ ըստ բանի քում, և կեցո զիս. և մի յամօթ առներ զիս ՚ի յուսոյ իմմէ ։ 117 * Օգնեա ինձ՝ և ապրեցո զիս. և խորհեցայց յիրաւունս քո յամ ժամ ։ 118 * Անարգեցեր զամենեսեան. ոք ապստամբք եղեն յարդարութեանց քոց. զի անիրաւութիւն էին խորհուրդք նց ։ 119 * Յանցաւորս համարեցայ զամենայն մեղաւորս երկրի. վասն այսորիկ սիրեցի զվկայութիւնս քո ։ 120 * Բևեռեա ընդ երկիւղ քո զմարմին իմ. զի ՚ի դատաստանաց քոց երկեայց յոյժ ։

## Հ ԱՅԻՆ ։ 16

121 Արարի իրաւունս և զարդարութիւն. մի մատներ զիս ՚ի ձեռս նեղչաց իմոց ։ 122 * Ընկալ զծառայս քո ՚ի բարի. զի մի ամբարտաւանք զրգռեսցեն զիս ։ 123 * Սպասեցին աչք իմ փրկութեան քում Տր. և բանից արդարութեան քոյ ։ 124 * Արա ընդ ծառայի քում ըստ ողորմութեան քում. զարդարութիւնս քո ուսո ինձ ։ 125 * Ծառայ քո եմ ես. իմաստուն արա զիս. և ծանեայց զվկայութիւնս քո ։ 126 * Ժամ է պաշտել զՏէր. խափանեցին զօրէնս քո ։ 127 * Վն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո. քան զամ ոսկի և զտոպազիոն ։ 128 * Ամենայն պատուիրանք քո յաջողեցան ինձ. զի ատեցի ես զճանապարհս չարաց ։

## Ձ ՓԷ ։ 17

129 Սքանչելիք են վկայութիւնք քո. վն այսորիկ քննեաց զնոսա անձն իմ ։ 130 * Յայտնութիւն բանից քոց լուսաւորէ. և իմաստուն առնէ զտղայս ։ 131 * Զբերան իմ բացի. և առի զհոգի. ՚ի պատուիրանս քո փափագեաց անձն իմ ։ 132 * Նայեաց առ իս՝ և ողորմեա ինձ ըստ իրաւունս սիրողաց անուան քոյ ։ 133 * Զճանապարհս իմ ուղիղ արա ինձ ըստ բանի քում. և մի տիրեսցեն ինձ ամենայն մեղք ։ 134 * Փրկեա զիս ՚ի զրպարտութենէ մարդկան. և պահեցից զպատուիրանս քո ։ 135 * Երևեցո զերեսս քո ՚ի ծառայս քո. և ուսո ինձ զարդարութիւնս քո ։ 136 * Ատակք ջուրց իջին յաչաց իմոց. զի ոչ պահեցին զօրէնս քո ։

## Ղ ՍԱԴԷ ։ 18

137 Արդար ես դու Տր. և ուղիղ են դատաստանք քո ։ 138 * Պատուիրեցեր զարդարութիւն վկայութեանց քոց. և ճշմարիտք են յոյժ ։ 139 * Մաշեաց զիս նախանձ քո. զի մոռացան զբանս քո թշնամիք իմ ։ 140 * Ընտրեալ է բան քո յոյժ. և ծառայ քո սիրեաց զսա ։ 141 * Մանուկ եմ ես՝ և արհամարհեալ. այլ զարդարութիւնս քո ես ոչ մոռացայ ։ 142 * Արդարութիւն քո՝ արդարութիւն յաւիտենից. և օրէնք քո ճշմարիտք են ։ 143 * Նեղութիւնք և վիշտք գտին զիս. և պատուիրանք քո խոկք իմ էին ։ 144 * Արդարութի են վկայութիւնք քո յաւիտեան. իմաստուն արա և կեցո զիս ։

## Ճ ԿՕՓ ։ 19

145 Կարդացի առ քեզ բոլորով սրտիւ իմով. լուր ինձ Տր՝ զի զարդարութիւնս քո խնդրեցից ։ 146 * Աղաղակեցի առ քեզ՝ և փրկեա զիս. և պահեցից զվկայութիւնս քո ։ 147 * Կանխեցի տարաժամու՝ աղաղակեցի. և ես ՚ի բանս քո յուսացայ ։ 148 * Կանխեցին աչք իմ առաւօտուց. ՚ի խօսել ինձ զբանս քո ։ 149 * Զձայն իմ լուր Տր ըստ ողորմութեան քում. յիրաւունս քո կեցո զիս ։ 150 * Մերձեցուցին յիս հալածիչք իմ զանօրէնութիւնս. զի յօրինաց քոց հեռի եղեն ։ 151 * Մերձ ես դու Տր. և ամ ճանապարհք քո ճշմարտութի են ։ 152 * ՚Ի սկզբանէ ծանեայ ՚ի վկայութեանց քոց. զի յաւիտեան հաստատեցեր զնոսա ։

## Մ ՌԷՍ ։ 20

153 Տես զխոնարհութիւն իմ, և փրկեա զիս. զի զօրէնս քո ես ոչ մոռացայ ։ 154 * Դատեա զդատաստան իմ, և փրկեա զիս. և ըստ բանի քում կեցո զիս ։ 155 * Հեռի է ՚ի մեղաւորաց փրկութի. զի զիրաւունս քո ոչ խնդրեցին ։ 156 * Գթութիւնք քո բազումք են Տէր. ըստ իրաւանց քոց կեցո զիս ։ 157 * Բազումք են՝ որք հալածեն՝ և նեղեն զիս. ՚ի վկայութեանց քոց ես ոչ խոտորեցայ ։ 158 * Հայէի յանմտորդսն՝ և մաշէի.

մաշէի. զի զպատուիրանս քո ոչ պա
հեցին: *Տես, զի զպատուիրանս քո 159
սիրեցի. Տր ողորմութբ քով կեցո
զիս: *Սկիզբն բանից քոց ճշմարտու 160
թի է. յաւիտեան են ամ իրաւունք
արդարութե քոյ:

Յ ՍԻՆ: 21

Իշխանք հալածեցին զիս ՚ի նանիր. 161
և ՚ի բանից քոց երկեաւ սիրտ իմ:
*Ցնծացայ ես ՚ի բանս քո. որպ այն 162
որ գտանէ աւար բազում: *Զմեղս 163
ատեցի և անարգեցի. այլ զօրէնս
քո սիրեցի: *Եօթնանգամ յաւուր 164
օրհնեցից զքեզ. վս իրաւանց արդա
րութե քոյ: *Խաղաղութի բազում 165
է այնոցիկ, ոյք սիրեցին զօրէնս քո.
և ոչ գոյ ՚ի նոսա գայթագղութի:
*Սպասեցի փրկութե քում Տր. և 166
զպատուիրանս քո սիրեցի: *Պա 167
հեաց անձն իմ զվկայութիս քո. և
սիրեաց զնոսա յոյժ: *Պահեցի ըզ 168
պատուիրանս և զվկայութիս քո. զի
ամ ճանապարհք իմ առաջի քո են:

Ն ԹԱՒ: 22

Մերձեցին խնդրուածք իմ առա 169
ջի քո Տր. ըստ բանի քում իմաս
տուն արա զիս: *Մտցեն աղօթք 170
իմ առաջի քո Տր. և բանիւ քով փր
կեա զիս: *Բղխեսցեն շրթունք իմ 171
զօրհնութիս քո, յորժամ ուսուցես
ինձ զարդարութիւնս քո: *Խօսես 172
ցի լեզու իմ զբանս քո. զի ամ պատ
ուիրանք քո արդարութբ են:
*Եղիցի ձեռն քո ՚ի կեցուցանել զիս. 173
զի զպատուիրանս քո ընտրեցի:
*Ցանկացայ փրկութե քում Տր. և 174
օրէնք քո խօսք իմ էին: *Կեցցէ 175
անձն իմ. և օրհնեսցէ զքեզ. և իրաւ
ունք քո օգնեսցեն ինձ: *Մոլորեցայ 176
ես որպէս ոչխար կորուսեալ. խնդ
րեա զծառայս քո. զի զպատուիրանս
քո ես ոչ մոռացայ:

Օրհնութիւն Աստիճանաց:
ՃԺԹ:

Ի ՆԵՂՈՒԹԵԱՆ 1
իմում եմ առ Տր կարդացի. և
լուաւ ինձ: *Տէր, փրկեա 2
զանձն իմ ՚ի շրթանց նենգաւորաց.
և ՚ի լեզուէ չարէ: *Զի՞ տացի քեզ. 3
կամ զի՞նչ յաւելցի լեզուդ նենգաւոր:
*Նետք հզօրի, զի մխեալ են կայ 4
ծակամբք կաղնւոյ: *Վայ ինձ, զի 5
ընդ երկար եղև պանդխտութի իմ.
բնակեցայ ես ՚ի վրանս կեդարու:

6 *Բազում անգամ բնակեցաւ անձն
7 իմ ընդ այնոսիկ, *ոյք ատէին զողջոյն:
Ես էի խաղաղարար. յորժամ խօ
սէի, մարտնչէին ընդ իս:

Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻ:

1 Համբարձի‖ զաչս իմ ՚ի լերինս. ուս ‖2. Մնա
2 տի եկեսցէ ինձ օգնութի: *Օգնու 20. 17.
թի ինձ ՚ի Տե եկեսցէ. որ արար զեր
3 կինս և զերկիր: *Մի տար ՚ի սասա
նութի զոտն քո. և մի՛ ննջեսցէ պա
4 հապան քո: *Որպէս ոչ ննջէ. և ոչ ՚ի
5 քուն երթայ պահապանն իէլի: *Տր
պահեսցէ զքեզ. և Տր ընկալցի աջու
6 ձեռամբ իւրով: *Արեգակն ՚ի տուէ
քեզ մի մեղիցէ. և մի լուսին ՚ի գիշերի:
7 *Տր պահեսցէ զքեզ յամ չարէ. պա
8 հեսցէ Տր զանձն քո: *Տր պահեսցէ
զմուտ և զել քո յայսմ հետէ մինչև
յաւիտեան:

Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԱ:

1 Ուրախ եղէ, ոյք ասէին ցիս. ՚ի տուն
2 Տն երթիցուք մեք: *Հաստատեալ կային
ոտք մեր. առ դրունս քո երուսաղէմ:
3 *Երուսաղէմ շինեալ որպ քաղաք.
և բնակութի իւր շուրջ զնովաւ:
4 *Անդ ելին ազգք. ազգք Տն, վկայու
թի իէլի. խոստովան լինել անուան Տն:
5 *Անդ արկեալ են աթոռք դատաստա
նի. աթոռք արկեալ ՚ի տան դաւթի:
6 *Հարցէք զողջոյնն եմի. զշինուէ
7 ոյք սիրէք զնա: *Եղիցի խաղաղու
թի ՚ի զօրութե քում. և շինութի յաշ
8 տարակս յամուրս քո: *Վասն եղ
բարց և ընկերաց իմոց խօսեցայ զխա
9 ղաղութի: վասն քո, *և վասն տան Տն
Այ մերոյ խնդրեցաք զբարութի քեզ:

Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԲ:

1 Առ քեզ Տր համբարձի զաչս իմ. որ
2 բնակեալդ ես ՚ի յերկինս: *Որպ
աչք ծառայից ՚ի ձեռս տերանց իւր
եանց. որպէս աչք աղախնոյ ՚ի ձեռս
տիկնոջ իւրոյ: Այնպէս են աչք մեր
առ քեզ Տր Այ մեր. մինչև ողորմես
3 ցիս ՚ի վր մեր *Ողորմեաց մեզ Տր ողոր
մեաց մեզ. զի բազում լցաք արհամարհա
4 նօք: *Եւս առաւել լցան անձինք մեր
նախատանօք, ոյք նախատէին զմեզ
արհամարհանօք ամբարտաւանից:

Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԳ:

1 Եթէ ոչ Տր էր առ մեզ, ասասցէ
2 իէլ. *եթէ ոչ Տէր էր առ մեզ:
Ընդ յառնել մարդկան ՚ի վերայ մեր:
3 *կենդանւոյն կամեցան կլանել զմեզ:
՚Ի բարկանալ սրտմտութբ նց ՚ի վր մեր.
*ապա

4 *ապա և ջուրք ուրեմն ընկլուզին զմեզ: 5 *Ընդ ուղխս անցին անձինք մեր. անցին անձինք մեր ընդ ջուրս անդադարս: 6 *Օրհնեալ է Տր. որ ոչ ետ զմեզ յորս ատամանց նց: 7 *Անձինք մեր ապրեցան. որպէս ճնճղուկ յորոգայթէ որսողաց: 8 *Որոգայթք նոցա փշրեցան. և մեք ապրեցաք: 9 *Օգնութիւն է մեզ յանուանէ Տն. որ արար զերկինս և զերկիր:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԴ:

Որ յուսայ 'ի Տր՝ որպ լեառն սիոն. մի սասանեսցի յաւիտեան. որ բնակեալ է յէմ: 2 *Լերինք շուրջ են զնովաւ. Տր շուրջ է զժողովրդեամբ իւրով՝ յայսմհետէ մինչև յաւիտեան: 3 *Ոչ թողու Տր զգաւազան մեղաւորաց 'ի վիճակս արդարոց. զի արդարք մի ձգեսցեն զձեռս իւրեանց յանօրէնութիւն: 4 *Բարի արա Տր բարեաց. և այնոցիկ՝ որք ուղիղք են սրտիւք: 5 *Իսկ զթիւրեալսն 'ի յափշտակութիւն, տարցի զնս Տր ը այնոսիկ՝ որք գործեն զանօրէնութիւն. խաղաղութիւն 'ի վերայ իսրայէլի:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԵ:

'Ի դարձուցանել Տն զգերութիւն սիոնի. և եղեաք մեք մխիթարեալք: 2 *Յայնժամ լցան բերանք մեր խնդութբ. և լեզուք մեր ցնծութբ: Յայնժամ ասասցեն 'ի հեթանոսս. մեծ արար Տր առնել ը նոսա. 3 *մեծ արար Տր առնել ը մեզ. և մեք եղեաք բերկրեալք: 4 *Դարձո Տր զգերութիւս մեր, որպ զուղխս 'ի հարաւոյ. 5 *որք վարէին արտասուօք, ցնծութբ հնձեսցեն: 6 *Երթալով երթային՝ և լային. որք բարձեալ տանէին զսերմանս իւրց: Գալով եկեսցեն՝ և ցնծասցեն. որք առեալ բերիցեն զորայս իւրեանց:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԶ:

Եթէ ոչ Տր շինէ զտունն՝ ինանիր վաստակին շինօղք նր: Եթէ ոչ Տր պահէ զքաղաք, ընդունայն տքնին պահապանք նր: 2 *Ինանիր է ձեզ յառնել կանխաւ. արդ՝ արիք մինչև էք նստեալք՝ որք ուտէք զհաց ցաւոց: 'Ի ժամանակի, որպ տացի քուն սիրելեաց իւրոց: 3 *Ժառանգութիւն առն որդիք են. որոյ վարձք իւր են. այն է պտուղ որովայնի իւրոյ: 4 *Որպէս նետք 'ի ձեռս հզօրի. այնպէս են որդիքն թօթափելոց: 5 *Երանի՝ որ ելից զցանկութիւն իւր 'ի նոցանէն. և ոչ ամաչեսցեն՝ յորժամ խօսեսցին թշնամիք նոցա ընդ նոսա առ դրան:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԷ:

Երանի ամենեցուն՝ որք երկնչին 'ի Տէ. և գնան 'ի ճանապարհս նր: 2 *Զվաստակս ձեռաց քոց կերիցես. երանի է քեզ՝ և բարի եղիցի: 3 *Կին քո որպ զայգի վայելուչ յանկիւնս տան քոյ. որդիք քո որպ նորատունկ ձիթենւոյ շուրջ զսեղանով քով: 4 *Այսպէս օրհնեսցի այր մարդ 5 որ երկնչի 'ի Տէ: *Օրհնեսցէ զքեզ Տր 'ի սիոնէ. և տեսցես դու զբարութի երէմի՝ զամ աւուրս կենաց քոց: 6 *Տեսցես դու զորդիս որդւոց քոց զխաղաղութի 'ի վր իղի:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԸ:

Բազում անգամ մարտեան ընդ իս 'ի մանկութէ իմմէ. ասասցէ իէլ: 2 *Բազում անգամ մարտեան ընդ իս 'ի մանկութէ իմմէ. և ինձ ոչ յաղթեցին: 3 *Զթիկունս իմ հարին մեղաւորք. ընդ յերկար արարին զանօրէնութիս իւրեանց: 4 *Տր արդար է, և խորտակէ զուլն մեղաւորաց: 5 *Ամաչեսցեն՝ և յետս դարձցին ամենեքեան՝ որք ատեան զսիոն: 6 *Եղիցին նոքա որպ խոտ տանեաց. որ մինչև 'ի բուսն եկեալ էր՝ չորացաւ: 7 *Ուստի ոչ ելից զբուռն իւր հնձօղն. և ոչ զգիրկս իւր՝ 8 որ զորայն ժողովէր: *Ոչ ասացին ամենեքեան՝ որք անցանէին առ նոքօք. թէ օրհնութի Տն ընդ ձեզ. և օրհնեցաք զձեզ յանուանէ Տն:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԻԹ:

'Ի խորոց կարդացի առ քեզ Տր: 2 *Տէր լուր ձայնի իմում: Եղիցին ականջք քո. հայիլ 'ի ձայն աղօթից իմոց: 3 *Եթէ զանօրէնութիս պահես Տր. Տր՝ ո կարէ կալ առաջի 4 քո: *զի 'ի քէն է քաւութի: Վասն 5 անուան քոյ համբերի Տր. *համբեր անձն իմ բանի քում, յուսացաւ անձն 6 իմ 'ի Տր: *'Ի պահէ առաւօտու մինչև 7 յերեկոյ. 'ի պահէ առաւօտու. *յուսացաւ իէլ 'ի Տր: Տն է ողորմութի բազում. և 'ի նմանէ է փրկութի. 8 *և նա փրկէ զիէլ յամ նեղութեց նր:

### 1 Օրհնութիւն Աստիճանաց: ՃԼ:

Տր ոչ բարձրացաւ սիրտ իմ. և ոչ զբօսան աչք իմ: Ոչ գնացի ես ընդ մեծամեծս. և ոչ ընդ այնոսիկ՝ որք սքանչելիք էին քան զիս: 2 *Բայց թէ խոնարհեցայ ես որպէս զմանուկ հա-

հատուցեալ 'ի ստենս մօր իւրոյ. և
դարձ նր անդրէն 'ի նոյն: Այլ հպարտ
տացուցի արդեօք զանձն իմ. այսպէս
եղիցի հատուցումն անձին իմոյ:
*Յուսացաւ Իէլ 'ի Տր յայսմ հետէ 3
մինչև յաւիտեան:

Օրհնութիւն աստիճանաց Դաւթի: ՃԼԱ: 1

Յիշեա Տր զԴաւիթ` և զամենայն
հեզութիւն նր: *Որպէս երդուաւ 2
Տն. և ուխտեաց Այ յակոբայ: *Թէ 3
ոչ մտից 'ի յարկս տան իմոյ. եթէ
ելից յանկողինս մահճաց իմոց:
*Եթէ տաց քուն աչաց իմոց. կամ 4
նինջ արտևանաց իմոց. *կամ հան- 5
գիստ իրանաց իմոց: մինչև գտից զտե-
ղի յարկի Տն Այ յակոբայ: *Ահա 6
լուաք զնմանէ յեփրաթայ. և գտաք
զնա 'ի դաշտս մայրեաց: *Մտցուք 'ի 7
յարկս նորա. երկիր պագցուք 'ի տեղ-
ւոջ` ուր կացեալ են ոտք նորա:
‖ 2. Մն. 6. 41. *‖Արի Տր 'ի հանգիստ քո` դու և 8
կտակարանք սրբութե քոյ: *Երի- 9
ցունք քո զգեցցին զարդարութի.
և սուրբք քո ցնծալով ցնծասցեն:
*Վս Դաւթի ծառայի քո. մի դար- 10
ձուցաներ զերեսս քո յօծելոյ քում-
մէ: *Երդուաւ Տր Դաւթի ճշմար- 11
‖ 2. Թագ. 7. 12. տութե` և ոչ ստեաց նմա. ‖'ի պտ-
ղոյ որովայնի քոյ նստուցից յաթոռ
Ղուկ. 1. 55. քո: *Թէ պահեսցեն որդիք քո զօ- 12
րէնս իմ. և զվկայութիւնս իմ, զորս
Գործ. 2. 30. ուսուցից նոցա: Որդիք նոցա նստցին
յաւիտեանս յաւիտենից յաթոռ քո:
*Հաճեցաւ Տր զսիոն. և ընտրեաց 13
բնակել 'ի նմա: *ասէ` այս է հանգիստ 14
իմ յաւիտեանս յաւիտենից` 'ի սմա
բնակեցայց` զի հաճեցայ ընդ սա:
*Զորս սորա օրհնելով օրհնեցից. և 15
զաղքատս սորա լցուցից հացիւ:
*Քահանայից սորա զգեցուցից զփր- 16
կութի. և սուրբք սորա ցնծալով ցըն-
‖ Ղուկ. 1. 69. ծասցեն: *‖Անդ ծագեցից զեղջիւր 17
Դաւթի. պատրաստ արարից ճրագ
Մաղաք. 3. 1. օծելոյ իմոյ: *Թշնամեաց նր զգեցու- 18
ցից զամօթ. այլ 'ի վերայ նորա ծաղ-
կեսցի սրբութի իմ:

Օրհնութիւն աստիճանաց: ՃԼԲ: 1

Զի բարի կամ զի վայելուչ. զի բնա-
կին եղբարք 'ի միասին:
*Որպէս իւղ զի իջանէ 'ի գլուխ և 2
'ի մօրուսն Ահարօնի. և 'ի մօրուսայն
իջանէ 'ի գրապան զգեստու նորա:
*Որպէս ցօղ զի ցօղի 'ի Հերմոնէ. 'ի լե- 3
րինս սիոնի: Անդ պատրաստեաց Տր
զօրհնութի. և զկեանսն յաւիտենից:

1 Օրհնութիւն աստիճանաց: ՃԼԳ:

Ահա օրհնեցէք ամենայն ծառայք
Տն զՏր. ո կայք 'ի տան Տն 'ի
2 գաւիթս Այ մերոյ: *'Ի գիշերի
համբարձէք զձեռս ձեր 'ի սրբութի.
3 և օրհնեցէք զՏր: *Օրհնեսցէ զքեզ
Տէր 'ի սիոնէ. որ արար զերկինս և
զերկիր:

1 Ալէլուիա: ՃԼԴ:

Օրհնեցէք զանուն Տն. օրհնեցէք
2 ծառայք Տն զՏր: *ո՛ կայք 'ի
տան Տն, 'ի գաւիթս տան Այ մերոյ:
3 *Օրհնեցէք զՏր` զի բարի է. սաղ-
մոս ասացէք անուան նր` զի քաղցր է:
4 *Զյակոբ ընտրեաց իւր Տր. և զԻէլ
5 ժառանգութի իւր: *Ես ծանեայ`
զի մեծ է Տր. և Տր մեծ է քան զամ
6 կուռս: *Զամենայն զոր ինչ կամե-
ցաւ` և արար Տր. յերկինս և յերկրի.
7 'ի ծովս և յամենայն խորս: *‖Հանէ ‖ Երեմ. 10. 13:
զամպս 'ի ծագաց երկրի. զփայլատա-
կունս իւր յանձրևս արար. և հանէ
8 զհողմս 'ի շտեմարանաց իւրոց: *‖Ո ‖ Ելից. 12. 29.
եհար զամ անդրանիկս եգիպտացւոց
9 'ի մարդոյ մինչև յանասուն: *Առա-
քեաց զնշանս և զարուեստս իւր 'ի մէջ
քո եգիպտոս` 'ի փարաւոն` և յամենայն
10 զօրս իւր: *Ո եհար զազգս բազումս.
և սպան զթագաւորս հզօրս:
11 *‖Զսեհոն թագաւոր ամորհացւոց. ‖ Թուոց 21. 1. և 33.
զովգ թագաւոր բասանու. և զամ
թագաւորութիւնս քանանացւոց:
12 *Ետ զերկիր նց 'ի ժառանգութի Յեսու. 12. 1. և 7.
ժառանգութի իէլի ժողովրդեան իւ-
13 րոյ: *Տր անուն քո յաւիտեան. Տր
յիշատակ քո յազգէ մինչև յազգ:
14 *Դատէ Տր զժողովուրդս իւր. և
15 'ի ծառայս իւր մխիթարի: *‖Կուռք ‖ Սղ. 113. 4.
հեթանոսաց արծաթ և ոսկի են. ձե-
ռագործք են որդւոց մարդկան:
16 *‖Բերան գոյ` և ո՛չ խօսին. աչք են` և ‖ Իմաստ. 15. 15.
17 ո՛չ տեսանեն: *Ականջք են` և ո՛չ
լսեն. և ո՛չ գոյ շունչ 'ի բերանս նոցա:
18 *Նման նց եղիցին` ոյք արարին զնս:
և ամենեքեան ոյք յուսացեալ են 'ի
19 նոսա: *Տուն իսրայէլի օրհնեցէք զՏր.
տուն Ահարօնի օրհնեցէք զՏէր:
Տուն ղևեայ օրհնեցէք զՏր. երկիւ-
ղածք Տեառն օրհնեցէք զՏր:
20 *Օրհնեալ Տր 'ի սիոնէ. այն որ բնա-
կեալն է յերուսաղէմ:

1 Ալէլուիա: ՃԼԵ:

Խոստովան եղերուք Տն. զի բարի է`
զի յաւիտեան է ողորմ նորա:
2 *Խոստովան եղերուք Այ աստու-

 ծոց.

ծոյ. զի յաւիտեան է ողորմ նորա:
*Խոստովան եղերուք Տն տերանց. 3
զի յաւիտեան է ողորմ նորա: *Որ արար 4
զսքանչելիս մեծամեծս միայն՝ զի յա-
ւիտեան է ողորմ նորա: *Զերկինս 5
Ծննդ. 1. 1. արար իմաստութբ իւրով. զի յաւի-
տեան է ողորմ նորա: *Հաստա- 6
Ծննդ. 1. 6. տեաց զերկիր ՚ի վերայ ջուրց. զի յաւի-
տեան է ողորմ նորա: *Որ արար լու- 7
Երեմ. 10. 12. սաւորս մեծամեծս՝ զի յաւիտեան է
և 51. 15 ողորմ նորա: *Զարեգակն արար իշ- 8
Ծննդ. 1. 14. խանական տունջեան. զի յաւիտեան
է ողորմ նորա: *Զլուսին և զաս- 9
տեղս իշխանական գիշերոյ. զի յաւի-
Ելից. 12. 29. տեան է ողորմ նորա: *Որ հար զեր- 10
կիրն եգիպտացւոց անդրանկօք իւր-
ովք հանդերձ. զի յաւիտեան է ողորմ
Ելից. 12. 37. և 13. 17 նորա: *Եւ եհան զԻէլ ՚ի միջոյ նց. 11
զի յաւիտեան է ողորմ նորա:
*Ի ձեռն բարձր՝ և ՚ի բազուկ հզօր. 12
զի յաւիտեան է ողորմ նորա:
*Հերձ զծովն մեծ. և բաժանեաց 13
յերկուս մասունս. զի յաւիտեան է:
*Եւ անցոյց զԻէլ ընդ մէջ նորա. զի: 14
Ելից. 14. 28. *Ընկղմեաց զփարաւոն և զզօրս իւր 15
՚ի ծով կարմիր. զի յաւիտեան է ողորմ:
*Հան զժողովուրդ իւր յանապատ. 16
զի: *Եհար զթագաւորս մեծամեծս. 17
Թուոց 21. 24. զի: *Եւ սպան զթագաւորս հզօրս. 18
զի յաւիտեան է: *Զսեհոն թագաւ 19
Թուոց 21. 33. որ ամորհացւոց. զի: *Զովգ թա- 20
գաւոր բասանու. զի: *Եւ ետ զեր- 21
Յեսուայ 13. 7. կիր նոցա ՚ի ժառանգութի. զի:
*Ժառանգութի իսրայէլի ծառայի 22
իւրոյ. զի յաւիտեան է ողորմ նորա:
*Յիշեաց զմեզ Տէր ՚ի խոնարհութե 23
մերում. զի: *Եւ փրկեաց զմեզ ՚ի 24
ձեռաց թշնամեաց մերոց. զի: *Տայ 25
կերակուր ամենայն կենդանեաց. զի:
*Խոստովան եղերուք Այ երկնաւո- 26
րի. զի յաւիտեան է ողորմ նորա:

## Սաղմոս Դաւթի ՚ի ձեռն Երեմիայ: ՃԼԶ:

Առ գետս բաբելացւոց. անդ նստէաք 1
և լայաք. որպէս յիշեցաք մեք անդ
զսիոն: *՚Ի մէջ ուռեաց նց կախեցաք 2
զկտակարանս մեր: *Ընդ հարցանէին 3
գերիչք մեր զբանս օրհնութե. գերե
վարք մեր ստիպէին զմեզ. և ասէին:
Օրհնեցէք մեզ յօրհնութէ սիոնի:
*իսկ զիարդ օրհնեսցուք զօրհնու- 4
թիս Տն յերկրի օտար: *Եթէ մո- 5
ռացայց զքեզ Եմ. մոռասցի զիս
աջ իմ: *Կցեսցի լեզու իմ ՚ի քիմս 6
իմ. թէ ոչ յիշեցից զքեզ. թէ ոչ նախ
նուաճեցից զքեզ Եմ սկիզբն ուրա
խութե իմոյ: *Յիշեա Տէր զորդիսն 7
եդովմայ՝ յաւուրս Եմի: Որք ասէին՝
քակեցէք՝ քակեցէք. մինչև ՚ի հիմն
8 հասուցէք: *Դուստր բաբելացւոց
թշուառական. երանի՝ որ հատուսցէ ըզ
հատուցումն քո՝ զոր դու մեզ հատու-
9 ցեր: *Երանի որ կալցէ զմանկունս Եսայ. 13. 16.
քո՝ և եհար զքարի:

## 1 Սաղմոս Դաւթի: ՃԼԷ:

Խոստովան եղէց քեզ Տր բոլորով
սրտիւ իմով. առաջի հրեշտակաց
սաղմոս ասացից քեզ: Զի լուար ըզ
2 բանս բերանոյ իմոյ. *Երկիր պագից
՚ի տաճար սուրբ քո. և խոստովան ե-
ղէց անուան քում. վասն ողորմու-
թեն՝ և ճշմարտութեն քոյ: Մեծ արա-
րեր յամենայնի զանուն սբ քո:
3 *յորում աւուր կարդամ առ քեզ.
վաղվաղակի լուր ինձ. և բազում ա-
րասցես զզօրութիւն յանձն իմ:
4 *Խոստովան եղիցին առ քեզ Տր ամ
թագաւորք երկրի. զի լուան զբանս
5 բերանոյ քոյ: *և օրհնեսցեն զճանա-
պարհս քո: Մեծ են փառք Տն. բարձր
6 է Տր՝ զխոնարհս տեսանէ: *և զբար-
ձունս ՚ի հեռաստանէ ճանաչէ:
7 *Թէ գնացից ես ՚ի մէջ նեղութեց.
կեցուսցես զիս. ՚ի բարկութէ թշնամ
ւոյն: Ձգեցեր զձեռն քո. և փրկեաց
8 զիս աջ քո. *և Տր հատուսցէ ը իմ:
Տր ողորմութի քո յաւիտեան. զգործս
ձեռաց քոց մի անտես առներ:

## 1 ՚Ի կատարած Դաւթի: ՃԼԸ:

Տր փորձեցեր զիս՝ և ծանեար զիս
2 *դու ծանեար զնստել իմ. և
զյառնել իմ: *՚Ի միտ առեր
3 զխորհուրդս իմ ՚ի հեռաստանէ: զշաւ
իղս իմ, և զվիճակս իմ դու քննեցեր.
4 *և զամենայն ճանապարհս իմ յառա
ջագոյն տեսեր: զի ոչ գոյ նենգութի
5 ՚ի լեզուի իմում: *Ահա դու Տր ծա-
նեար զյետինն իմ և զառաջինն իմ: դու
ստեղծեր զիս. և եդեր զձեռն քո ՚ի
6 վերայ իմ: *Սքանչելի եղև գիտու-
թի քո յինէն. զօրացաւ, և ոչ հան-
7 դարտիմ նմա: *Յո երթայց ես յոգ-
ւոյ քումմէ. և կամ յերեսաց քոց ես
8 յո՞ փախեայց: *Թէ ելանեմ յեր- Ամովս. 9. 2.
կինս՝ դու անդ ես՝ և թէ իջանեմ ՚ի
9 դժոխս՝ և անդ մօտ ես: *Եւ թէ
առից զթևս իմ ընդ առաւօտս. և
բնակեցայց յեզերս ծովու:
10 *Սակայն և անդ ձեռն քո առաջնոր-
դեսցէ ինձ. և աջ քո ընկալցի զիս:
11 *Ասացի թէ խաւար ուրեմն արգելոք
ծածկեաց զիս. կամ գիշեր փոխանակ
12 լուսոյ փափկութե իմոյ: *Խաւարն

'ի քէն ոչ խաւարեսցի. և գիշերն որպէս տիւ լուսաւոր եղիցի. և խաւար նորա որպէս լոյս նմա: 13 * Դու ստացար զերիկամունս իմ. և ընկալար զիս յորովայնէ մօր իմոյ: 14 * Խոստովան եղէց քեզ Տր̃՝ զի ահեղ և սքանչելի ես. սքանչելիք են գործք քո՝ և անձն իմ սիրեաց յոյժ: 15 * Ոչ թաքեաւ ոսկր իմ 'ի քէն՝ զոր արարեր 'ի ծածուկ. և կար զօրութե̃ իմոյ ընդ ստորինս երկրի: 16 * Զանգործս իմ տեսին աչք քո. և 'ի գիրս քո ամենեքեան գրեցան: 'Ի տուէ մոլորեցան. և ոչոք էր՝ որ առաջնորդէր նոցա: 17 * Ինձ յոյժ մեծարուք եղեն բարեկամք քո Ա̃ծ. և յոյժ զօրացան իշխանք նոցա: 18 * Թուեցից զնոսա՝ և քան զաւազ բազմասցին. զարթեայ՝ և արդ ընդ քեզ եմ: 19 * Եթէ սպանանես զմեղաւորս Ա̃ծ. արք արեանց 'ի բաց եղերուք յինէն. 20 * 'Ի հակառակութի̃ և 'ի նախանձ. առցեն ինանիր զքաղաքս քո: 21 * Ոչ զատելիս քո Տր̃ միայն ատեցի. այլ և 'ի վերայ թշնամեաց քոց մաշեցայ: 22 * Յատելութի̃ կատարեալ ատեցի զնոսա. և եղեն ինձ թշնամիք: 23 * Փորձեա զիս Ա̃ծ՝ և ծանիր զսիրտ իմ. քննեա զիս՝ և ծանիր զշաւիղս իմ: 24 * և տես թէ իցեն անօրէնութիւնք 'ի ճանապարհս իմ. և առաջնորդեա ինձ 'ի ճանապարհս քո յաւիտենից:

### 1 'Ի կատարած Սաղմոս Դաւթի: ՃԼԹ:

2 Ապրեցո զիս Տէր 'ի մարդոյ չարէ. յառնէ անիրաւէ փրկեա զիս: 3 * Խորհեցան զանօրէնութի̃ 'ի սիրտս իւրեանց. զօր ամ̃ պատրաստեցան 'ի պատերազմ: 4 * ‖ Սրեցին զլեզուս իւրեանց որ̃ զօձից. թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց նոց̃: 5 * Պահեա զիս Տր̃ 'ի ձեռաց մեղաւորի. և 'ի մարդոյ չարէ փրկեա զիս: Խորհեցան խափանել զգնացս իմ: 6 * Թաքուցին ամբարտաւանք զորոգայթ ինձ: Լարս ձգեցին յորոգայթս ոտից իմոց. շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ զգայթագղութի̃: 7 * Ասացի Տն̃ Ա̃ծ իմ ես դու. ունկն դիր Տր̃ ձայնի աղօթից իմոց: 8 * Տր̃ Տր̃ զօրութի̃ փրկութե̃ իմոյ. հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի: 9 * Մի մատներ զիս Տր̃ 'ի ցանկութի̃ մեղաւորաց. որք խորհեցան վասն իմ. մի ընդ վայր հարկաներ զիս: Օ̃ մի երբեք բարձրասցին. 10 * և խորհուրդք նոցա մի կատարեսցին. վախճան կատարածի նց̃ վաստակ շրթանց իւրեանց՝ ծածկեսցէ զնոսա: 11 * Արկցես 'ի վերայ նոցա կայծակունս հրոյ. կործանեսցես զնո̃.

‖ Հռով. 3.13. Սղմ. 5.11.

'ի տառապանաց մի կարասցեն կեալ: 12 * Մարդոյ լեզուանւոյ մի յաջողեսցի 'ի վերայ երկրի. զայր մեղաւոր, չարիք իւր որսասցեն 'ի կորուստ: 13 * Ծանեայ՝ զի առնէ Տէր զդատաստան աղքատի. և զիրաւունս տնանկի: 14 * Արդարք գոհասցին զանուանէ քումմէ. բնակեսցեն ուղիղք առաջի երեսաց քոց:

### 1 'Ի կատարած Սաղմոս Դաւթի: ՃԽ:

Տր̃ կարդացի առ քեզ՝ և լուր ինձ. նայեաց 'ի ձայն աղօթից իմոց 'ի կարդալ իմում առ քեզ: 2 * Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տր̃. համբառնալ ձեռաց իմոց պատարագ երեկորի: 3 * Դի՛ր Տր̃ պահապան բերանոյ իմոյ. և դուռն ամուր շրթանց իմոց: 4 * և մի խոտորեսցի սիրտ իմ բանիւք չարութե̃: 'Ի պատճառել զպատճառս մեղաց՝ ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութի̃. ոչ եղէց կցորդ ընտրելոց նոցա: 5 * Խրատեսցէ զիս արդարն ողորմութ̃. ակն յանդիմանն արասցէ զիս. իւղ մեղաւորի մի օծցէ զգլուխ իմ. և աղօթք իմ ըստ կամաց նորա: 6 * Ընկլցին մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն զբանս իմ. զի քաղցունք են: 7 * Որպէս թանձրութի̃ հողոյ՝ զի սփռեալէ 'ի վ̃ր երկրի. ցրուեցան ոսկերք նոցա մերձ 'ի դժոխս: 8 * Առ քեզ Տր̃՝ Տր̃՝ են աչք իմ. 'ի քեզ յուսացայ. մի հաներ զհոգի յինէն: 9 * Պահեա զիս յորոգայթէ՝ որ թաքուցին ինձ. 'ի գայթագղութե̃ որք գործեն զանօրէնութի̃: 10 * Անկցին 'ի ցանցս նոցա մեղաւորք. միայն եմ ես. մինչև անցից:

համբար ձեռին

### 1 Իմաստութիւն Դաւթի. աղօթք 'ի ժամանակի զի էր նա յայրի անդ: ՃԽԱ:

‖ 1 Թագ. 24. 4. Սղմ. 76. 1.

2 Ձայնիւ իմով ես առ Տր̃ կարդացի: ձայնիւ իմով զՏր̃ աղաչեցի. 3 * Սփռեցից առաջի Տն̃ զաղօթս իմ. և զնեղութիւնս իմ առաջի նորա պատմեցից: 4 * 'Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ՝ դու Տր̃ ծանեար զշաւիղս իմ. 'ի ճանապարհի՝ յոր գնայի. թաքուցին ինձ զորոգայթ: 5 * Հայէի յաջ իմ՝ տեսանէի. և ոչոք էր՝ որ ճանաչէր զիս. կորեաւ յինէն փախուստ իմ. և ոչոք էր՝ որ խնդրէր զանձն իմ: 6 * Աղաղակեցի առ քեզ Տր̃՝ ասացի, դու ես յոյս՝ և բաժին իմ յերկրին կենդանեաց: 7 * Նայեաց Տր̃ յաղօթս իմ. զի ես խոնարհ եղէ յոյժ. ապրեցո զիս 'ի հալածչաց իմոց՝ զի հզօրք եղեն

քան զիս ։ * Տր հա՛ն 'ի բանտէ զանձն 8
իմ . խոստովան եղէց անուան քում ։
Զինձ սպասեն արդարք քո . մինչեւ հա
տուցես ինձ ։

Սաղմոս Դաւթի 'ի ժամանակին զի հալածեաց 1
զնա աբեսաղոմ որդի նր ։ ՃԽԲ ։

Բ Թագ. 17. 2.

Տր լուր աղօթից իմոց . ունկնդիր լեր խնդրուածաց իմոց ճշմար-տութե̃ քով ։ Լուր ինձ արդա-
րութե̃ քով ։ * Եւ մի մտաներ ատեան 2
ընդ ծառայի քոյ . զի ոչ արդարանայ
առաջի քո ամենայն կենդանի ։

Ելից. 34. 7.

* Հալածեաց թշնամին զանձն իմ . խո 3
նարհ արար յերկիր զկեանս իմ . և
նստոյց զիս 'ի խաւարի որպէս մեռեալ
յաւիտենից ։ * Ձանձրացաւ յիս հո- 4
գի իմ . և սիրտ իմ խռովեցաւ յիս ։
* Յիշեցի զաւուրսն զառաջինս . խոր 5
հեցայ յամ գործս քո . յարարածս ձե
ռաց քոց խորհեցայ . և համբարձի
առ քեզ զձեռս իմ ։ * Անձն իմ ոպ̃ 6
առ քեզ ծարաւի է առ քեզ ։ * Վաղ- 7
երկիր ծարաւի է առ քեզ ։
վաղակի լուր ինձ Տր . զի նուաղեցաւ
հոգի իմ ։ Մի դարձուցաներ
զերեսս քո յինէն . նմանեցայց այնոցիկ՝
որք իջանեն 'ի գուբ ։ * Լսելի արա 8
ինձ առաւօտու զողորմութի̃ քո . զի
ես 'ի քեզ Տր յուսացայ ։ Ցոյց ինձ ճա
նապարհ յոր գնացից . զի առ քեզ
Տէր համբարձի զանձն իմ ։
* Փրկեա զիս 'ի թշնամեաց իմոց Ա̃Ծ . 9
զի զքեզ ապաւէն ինձ արարի ։
* Ուսո զիս առնել զկամս քո . զի դու 10
ես Ա̃Ծ իմ ։ Հոգի քո բարի՝ առաջ
նորդեսցէ ինձ յերկիր ուղիղ ։
* Վասն անուան քոյ Տէր կեցուսցես 11
զիս . արդարութե̃ քով հանցես 'ի նե
ղութէ̃ զանձն իմ . * Եւ ողորմութե̃ 12
քով սատակեսցես զթշնամիս իմ . կո
րուսցես զամենայն նեղիչս անձին ի
մոյ . զի ես ծառայ քո եմ ։

Սաղմոս Դաւթի առ գողիաթ ։ ՃԽԳ ։ 1

Օրհնեալ Տր Ա̃Ծ իմ . որ ուսոյց
զձեռս իմ 'ի պատերազմ . և զմա
տունս իմ 'ի ճակատամարտ ։ * Ողոր 2
մութի̃ իմ՝ և ապաւէն իմ . օգնական
իմ՝ և փրկիչ իմ . ապաւէն իմ, և ես
յուսամ 'ի նա ։ Հնազանդէ զժողո
վուրդս ընդ ինև ։ * Տր ո՞ է մարդ՝ 3
զի յայտնեցար նմա . կամ որդի մար
դոյ՝ թէ համարիս ինչ զնա ։ * Մարդ 4
նմանութե̃ նմանեցաւ . և աւուրք նր
որպէս հովանի անցին ։ * Տր խոնար 5
հեցո զերկինս՝ և էջ . մերձեա 'ի լե
րինս՝ և ծխեսցին ։ * Փայլատակեա 6
զփայլատակունս քո . և խռովեա

Յոբ. 8. 9. և 14. 2.

զնոսա . առաքեա զնետս քո . և ցրուեա
7 զնոսա ։ * Առաքեա զձեռն քո 'ի բար
ձանց . և փրկեա զիս 'ի ջուրց բազ
մաց . և 'ի ձեռաց որդւոց օտարաց ։
8 * Որոց բերանք խօսեցան զնան
րութի̃ . և աջ նոցա աջ է մեղաց ։
9 * Ա̃Ծ յօրհնութի̃ նոր օրհնեցից ըզ
քեզ . տասնաղեաւ սաղմոսարանաւ
10 սաղմոս ասացից քեզ ։ * Որ տացէ զփր
կութի̃ թագաւորաց մերոց . որ փր
կելոց իցէ զդաւիթ ծառայ իւր ։
11 'Ի սրոյ չարէ * փրկեա զիս . և ապրե
ցո զիս 'ի ձեռաց որդւոց օտարաց ։
Որոց բերանք խօսեցան զնանրութի̃ .
12 և աջ նոցա աջ է մեղաց ։ * Որոց
ուստերք որպէս նորատունկք հաս
տատեալք են 'ի մանկութե̃ իւրեանց .
դստերք նոցա զարդարեալ և պաճու
ճեալ 'ի նմանութի̃ տաճարի ։
13 * Շտեմարանք նոցա լի են՝ և բղխեն
'ի միմեանս . խաշինք նոցա բազմա
ծինք են՝ և բազմանան 'ի գնացս իւր
14 եանց ։ * Եւ անդեայք նց պարարտք
են ։ Ոչ գոյ խրամատութիւն ցանգոյ
նոցա . և ոչ աղաղակ 'ի հրապարակս
15 նոցա ։ * Երանեցին ժողովր
դեան . որոյ այս այսպէս է . նա երա
նի է ժողովրդեան . որոյ Տր Ա̃Ծ է նց ։

1 Օրհնութեանց Սաղմոս Դաւթի .
ՃԽԴ ։

Բարձր առնեմ զքեզ Ա̃Ծ իմ . և թա
գաւոր իմ . և օրհնեմ զանուն քո
յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտե
2 նից ։ * Զօրհանապազ օրհնեցից զքեզ .
և գովեցից զանուն քո յաւիտեան՝ և
3 յաւիտեանս յաւիտենից ։ * Մեծ է
Տր՝ և օրհնեալ է յոյժ . և մեծութե̃ նր
4 ոչ գոյ չափ ։ * Ազգ և ազգ գովեսցեն
զգործս քո . և զզօրութի̃ս քո պատ
5 մեսցեն ։ * Զմեծ վայելչութի̃ փառաց
սրբութե̃ քոյ խօսեսցին . և զսքանչե
6 լիս քո պատմեսցեն ։ * Զզօրութի̃
ահի քոյ ասասցեն . և զմեծութի̃ս քո
7 պատմեսցեն ։ * Զյիշատակ բազում
քաղցրութե̃ քոյ բղխեսցեն . և ար
8 դարութե̃ քով ցնծասցեն ։ * Գթած՝
և ողորմած է Տր . երկայնամիտ՝ և բա
9 զումողորմ ։ * Քաղցր է Տր առ ամենե
սեան . և գթութի̃ նր 'ի վր̃ ամ արա
10 րածոց իւրոց ։ * Խոստովան եղիցին
առ քեզ Տր ամ գործք քո . և սուրբք
11 քո օրհնեսցեն զքեզ ։ * Զփառս ար
քայութե̃ քոյ ասասցեն՝ . և զզօրու
12 թի̃ս քո պատմեսցեն ։ * Ծանուցանել
որդւոց մարդկան զզօրութի̃ս քո .
զփառս մեծվայելչութե̃ արքայութե̃
13 քոյ ։ * Արքայութի̃ քո արքայութիւն
ամ

ամ յաւիտենից . և Տէրութիւն քո յազգէ մինչև յազգ ։ Հաւատարիմ է Տէր յամ բանս իւր . և արդար է յամենայն գործս իւր ։ 14 * Հաստատէ Տէր զամ գայթագղեալս . և կանգնէ զամ գլորեալս ։ 15 * Աչք ամենեցուն 'ի քեզ յուսան . ‖ և դու տաս կերակուր նց 'ի ժամու ։ 16 * Բանաս զձեռն քո . լցուցանես զամենեսեան քաղցրութբ կամօք քովք ։ 17 * Արդար է Տէր յամ ճանապարհս իւր . և սուրբ է յամենայն գործս իւր ։ 18 * Մերձ է Տէր առ ամենեսեան՝ ոյք կարդան առ նա . առ ամենեսեան որք կարդան առ նա ճշմարտութեամբ ։ 19 * Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր . աղօթից նոցա լսէ՝ և կեցուցանէ զնոսա ։ 20 * Պահէ Տէր զամենեսեան՝ ոյք սիրեն զնա . և զամենայն մեղաւորս սատակէ ։ 21 * Զօրհնութիւն Տն խօսեսցի բերան իմ . օրհնեսցէ ամենայն մարմին զանուն սուրբ նորա յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից ։

Սղմ. 103.27.

## Ալէլուիայ Անգեայ և Զաքարեայ ։ 1
## ՃԽԵ ։

Օրհնեա ‖ անձն իմ զՏէր . օրհնեցից 2 զՏէր 'ի կեանս իմ . սաղմոս ասացից Այ իմոյ մինչև եմ ես ։ 3 * Մի յուսայք յիշխանս յորդիս մարդկան . զի ոչ գոյ փրկութի 'ի նոսա ։ 4 * Ելցէ հոգի 'ի նոցանէ՝ և դարձցին անդրէն 'ի հող . և յայնմ աւուր կորիցեն ամ խորհուրդք նոցա ։ 5 * Երանի ում Տէր Ած յակոբայ օգնական է նորա . և յոյս նորա 'ի Տր Ած է ։ 6 * ‖ Որ արար զերկինս և զերկիր . զծով , և զամենայն որ է 'ի նոսա ։ 7 * Պահէ զճշմարտութի յաւիտեան ։ և առնէ իրաւունս զրկելոց ։ Տայ զհաց քաղցելոց . և արձակէ զկապեալս ։ 8 * Տէր բանայ զաչս կուրաց . և կանգնէ զգլորեալս ։ Տէր սիրէ զարդարս ։ 9 * Տէր պահէ զպանդուխտս . զորբս և զայրիս ընդունի Տէր . և զճանապարհս ամպարշտաց կորուսանէ ։ 10 * Թագաւորեսցէ Տէր յաւիտեան . Ած քո սիօն յազգէ մինչև յազգ ։

Սղմ. 144. 2.
Գործ. 14. 14.
Յայտ. 14.7.

## Ալէլուիայ Անգեայ և Զաքարեայ ։
## ՃԽԶ ։

Օրհնեցէք զՏէր՝ զի բարի է սաղմոս . 1 Այ մերում քաղցր եղիցի օրհնութի ։ 2 * Շինէ զԵրուսաղէմ Տէր . և զցրուեալսն Իսրայէլի ժողովէ ։ 3 * Բժշկէ զբեկեալ սիրտս՝ և պատէ զամենայն վէրս նց ։ 4 * Ն թուէ զբազմութի աստեղաց . և զամենեսեան զնոսա յանուանէ կոչէ ։ 5 * Մեծ է Տէր մեր և մեծ է զօրութիւն նորա . իմաստութե նորա ոչ գոյ թիւ ։ 6 * Ընդունի զհեզս Տէր . և խոնարհ առնէ զմեղաւորս մինչև յերկիր ։ 7 * Օրհնեցէք զՏէր խոստովանութբ . սաղմոս ասացէք նմա օրհնութբ ։ 8 * Ն զգեցոյց զերկինս ամպօք . պատրաստ արար զանձրև յերկիր ։ Բուսոյց զխոտ 'ի լերինս . և զդալարի 'ի 9 ծառայութի մարդկան ։ * ‖ Որ տայ անասնոց զկերակուր իւրեանց՝ ձագուց ագռաւուց՝ ոյք կարդան առ նա ։ 10 * Ոչ թէ ընդ զօրութիւս ձիոյ կամեցաւ Տէր . և ոչ ընդ իրանս առն սկայի 11 հաճեցաւ ։ * Այլ հաճեցաւ Տէր յերկիւղածս իւր . և ընդ այնոսիկ՝ ոյք յուսան յողորմութի նորա ։

Յոբ. 39.3.

## Ալէլուիայ Անգեայ և Զաքարեայ ։
## ՃԽԷ ։

12 Գովեա Երուսաղէմ զՏէր ։ Եւ օրհնեա զԱծ 13 քո սիօն ։ * Զի զօրացոյց զնիգս դրանց քո . և օրհնեաց զորդիս քո 'ի 14 քեզ ։ * Որ եդ զսահմանս քո 'ի խաղաղութեան . պարարտութբ ցորենոյ 15 լցոյց զքեզ ։ * Որ առաքէ զբան իւր յերկիր . վաղվաղ ընթանան պատգամք նորա ։ 16 * Տնէ զձիւն որպէս զասր . և զմէգ որպէս փոշի ցանեաց ։ 17 * Արկանէ զսառն որպէս պատառս . առաջի ցրտոյ նորա ով կարէ կալ ։ 18 * Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա . շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք ։ 19 * Պատմէ զբան իւր յակոբայ . զարդարութի և զիրաւունս իւր Իսրայէլի ։ 20 * Ոչ այսպէս արար ամ ազգաց Տէր . և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նց ։

## Ալէլուիայ Անգեայ և Զաքարեայ ։ 1
## ՃԽԸ ։

Օրհնեցէք զՏէր յերկինս . օրհնեցէք 2 զնա 'ի բարձունս ։ * Օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա . օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա ։ 3 * Օրհնեցէք զնա արեգակն և լուսին . օրհնեցէք զնա ամ աստեղք և լոյս ։ 4 * ‖ Օրհնեցէք զնա երկինք երկնից . ջուրք որք 'ի վերոյ քան զերկինս ։ 5 * օրհնեսցեն զանուն Տն ։ Զի նա ասաց՝ և եղեն . հրամայեաց՝ և հաստատեցան ։ 6 * Կարգեաց զնոսա յաւիտեանս յաւիտենից . սահման եդ՝ և ոչ անցցէ ։ 7 * Օրհնեցէք զՏէր յերկրէ 8 վիշապք՝ և ամենայն խորք ։ * Հուր և կարկուտ . ձիւն և սառն . հողմ մրրկի՝ որք առնեն զբան նորա ։ 9 * Լերինք և ամենայն բլուրք . ծառք պտղաբերք՝ և ամենայն մայրք ։ 10 * Գազանք՝ և ամ անասունք . սողունք՝ և ամենայն թռչունք թևաւորք ։

Ծննդ. 1. 7.
Դան. 3. 59.60.

* Թա_

11 * Թագաւորք երկրի՝ և զօրք իւրեանց. իշխանք՝ և ամենայն դատաւորք երկրի: 12 * Երիտասարդք՝ և կուսանք. ծերք՝ և տղայք: 13 * օրհնեսցեն զանուն Տն: 14 * Բարձրացաւ անուն նր միայն. 15 * խոստովանութիւն նմա յերկինս և յերկրի: Բարձր արար Տր զեղջիւր ժողովրդեան իւրոյ. օրհնութիւն ամ սրբոց նր. յորդւոց Իղի. ժողովրդեան՝ որ մերձ է առ Տր:

## Ալէլուիա: ՃԽԹ.

1 Օրհնեցէք զՏր յօրհնութիւն նոր. օրհնութիւն նմա յեկեղեցիս սրբոց: 2 * Ուրախասցի Իղ յարարիչ իւր. որդիք Սիոնի ցնծասցեն 'ի թագաւորն իւրեանց: 3 * Օրհնեսցեն զանուն նորա օրհնութբ. սաղմոսիւք՝ և օրհնութբ սաղմոս ասասցեն նմա: 4 * Հաճի Տր ը ժողովուրդս իւր. և բարձր արասցէ զհեզս 'ի փրկութե: 5 * Պարծեսցին սբք փառօք՝ և ցնծասցեն 'ի հանգիստս իւրեանց. 6 * և բարձր արասցեն զԱծ բերանովք իւրեանց: 7 * Սուրք երկսայրիք են 'ի ձեռս նոցա. առնուլ զհատուցումն 'ի հեթանոսաց. յանդիմանութի ամ ժողովրդոց: 8 * Կապել զթագաւորս նց կապանօք. զզօրաւորս նոցա ձեռնակապաւ երկաթեաւ: 9 * Առնել 'ի նոսա զդատաստանն գրեալ. փառք այս են ամ սրբոց նորա:

## Ալէլուիա: ՃԾ.

1 Օրհնեցէք զԱծ 'ի սրբութե նր. օրհնեցէք զնա 'ի հաստատութե զօրութե նր: 2 * Օրհնեցէք զնա 'ի զօրութե նր. օրհնեցէք զնա 'ի բազում մեծութե նր: 3 * Օրհնեցէք զնա 'ի ձայն օրհնութե. օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ: 4 * Օրհնեցէք զնա ցնծութբ՝ գովեցէք զնա ուրախութեամբ: 5 * Օրհնեցէք զնա 'ի բանս քաղցունս. օրհնեցէք զնա 'ի բարբառ լսելի: Օրհնեցէք զնա 'ի ձայն գոհութեան. 6 * ամենայն հոգիք օրհնեսցեն զՏր:



Խնդրեցի 'ի Տեառնէ աղօթիւք, և տուաւ ինձ հանճար. կոչեցի. և եկն ինձ հոգի իմաստութեան : Իմաստ. 7. 7.



Եւ թագուհին Սաբայ լուաւ զիմաստութիւն Սողոմոնի, և եկն փորձել զնա առակօք : 3. Թագ. 10. 1.

# ԳԻՐՔ ԱՌԱԿԱՑ· ԶՈՐ ԵԲՐԱՅԵՑԻՔ ՄԻՍԼԷ ՅՈՐՋՈՐՋԵՆ:

## Գլուխ Առաջներորդ :

1 Առակք Սողոմոնի Որդւոյ Դաւթի : Արքայի Իսրայէլի :




2 ՃԱՆԱՉԵԼ ԶԻՄԱՍտութիւն և զխրատ: իմանալ զբանս հանճարոյ : 3 * Ընդունել զդարձուածս բանից, 'ի միտ առնուլ զարդարութիւն ճշմարիտ: և ուղղել զիրաւունս : 4 * Զի տացէ անմեղաց զխորագիտութիւն : մանկանց տղայոց զմիտս և զհանճար : 5 * Որոց իբրև լուիցէ իմաստունն, իմաստնագոյն լիցի : իսկ որ հանճարեղն է, զառաջնորդութիւն ստասցի: 6 * 'Ի միտ առցէ զառակս՝ և զբանս խորինս, զճառս իմաստնոց՝ և զառակս նց : 7 * Սկիզբն իմաստութեան երկիւղ Տն : հանճար բարի ամենեցուն՝ որք առնեն զնա : պաշտօն բարի առ Ած սկիզբն զգօնութեան : զիմաստութիւն և զխրատ ամպարիշտք անգոսնեն : 8 * Լուր որդեակ խրատու հօր քո՝ և մի՛ մերժեր զօրէնս մօր քո : 9 * Զի պսակ շնորհաց ընկալցիս 'ի գլուխ քո. և մանեակ ոսկի 'ի պարանոցի քում: 10 * Որդեակ՝ մի՛ խաբեսցեն զքեզ արք ամպարիշտք. և մի՛ ախորժեսցիս : 11 * Եթէ կոչեսցեն զքեզ՝ և ասասցեն. եկ ընդ մեզ՝ կցորդ լեր արեան. ծածկեսցուք յերկրի զայր արդար 'ի տարապարտուց : 12 * Կլցուք զնա կենդանւոյն իբրև դժոխք. և բարձցուք զյիշատակս նր յերկրէ : 13 * Եւ զստացուածս նորա զպատուականս ըմբռնեսցուք : լցցուք զտունս

Սաղմ. 110. 10. Սիրաք. 1. 16.

տունս մեր աւարաւ : * Զվիճակ քո 14
արկ ընդ մեզ : զքսակ հասարակաց
ստասցուք ամենեքեան : գանձարան 'ի
միասին եղիցի մեր : * Որդեակ՝ մի եր_ 15
թար ճանապարհ ընդ նոսա . խոտորեա՛
զոտն քո 'ի շաւղաց նոցա : * Զի ոտք նոցա 16
'ի չարիս ընթանան . || և երագունք են
'ի հեղուլ զարիւնս : * Զի ոչ եթէ տաս 17
րապարտուց ձգին գործիք թռչնոց :
* Վասնզի նոքին իսկ որք սպանութեան 18
հաղորդին, գանձեն անձանց իւրեանց
չարիս : ( կործանումն արանց անօրի_
նաց չար է : ) * Այս ճանապարհք են 19
ամենեցուն՝ որք գործեն զանօրէնս :
զի ամպարշտութբ զանձինս իւրեանց
սատակեն : * Իմաստութիւն յելս ճանա 20
պարհաց գովի . և 'ի հրապարակս զհա
մարձակութիւն բերէ : * Ի՛սկ 'ի գլուխս 21
պարսպաց քարոզի . և առ դրունս հզօ
րաց յաճախէ . և 'ի դրունս քաղաքաց
համարձակեալ խօսի : * Զորչափ ժա 22
մանակս անմեղքն իցեն զհետ արդա
րութեան, մի ամաչեսցեն : իսկ անմիտք
ցանկացօղք թշնամանաց . ամպարշ_
տեալք ատեցին զիմաստութիւն :
* || Ի՛սկ զատապարտք եղեն յանդիմա 23
նութեան : ահաւասիկ առաջի առնեմ
ձեզ զհոգւոյ իմոյ պատգամս . ուսու
ցից ձեզ զբանս իմ : * Վասնզի կոչէի՝ 24
և ոչ լսէիք : յերկարէի զբանս իմ . և
ոչ անսայիք : * Այլ ապախտ առնէիք 25
զխորհուրդս իմ . և յանդիմանութեց
իմոց ոչ անսայիք : * Այսուհետև ես 26
ծիծաղեցայց զկորստեամբ ձերով . և
ուրախ եղէց՝ յորժամ գայցէ ձեզ նե
ղութիւն և պաշարումն : * Ի՛սկ յորժամ 27
հասանիցի ձեզ յանկարծակի խռովու
թիւն . և կործանումն 'ի նմանութիւն
մրրկի գայցէ . կամ յորժամ հասցէ 'ի
վերայ ձեր սատակումն : * Լիցի՝ զի կար 28
դայցէք առ իս՝ և ես ոչ լուիցեմ ձեզ .
խնդրիցեն զիս չարք՝ և ոչ գտանիցեն :
* Զի ատեցին զիմաստութիւն . և զեր 29
կիւղ Տն ոչ խնդրեցին : * Ի՛սկ ոչ կա_ 30
մեցան անսալ խորհրդոց իմոց . և ար
համարհեցին զյանդիմանութիւնս իմ :
* Այսուհետև կերիցեն զպտուղս ճա 31
նապարհաց իւրեանց . և իւրեանց ամ
պարշտութբն յագեսցին : * Փոխա_ 32
նակ զի զրկէին զտղայս՝ կոտորեսցին .
և կշտամբութիւն զամպարիշտս սատա_
կեսցէ : * Իսկ որ ինձ լսէ՝ բնակեսցի 33
յուսով . և դադարեսցէ աներկիւղ
յամենայն չարութենէ :

|| Առակ. 13.3. Եսայ. 59.7. Հռոմ. 3.15.

|| Եսայ. 65. 12. և 66.4. Երեմ. 7. 13.

## Գլ : Բ :

1 Որդեակ՝ եթէ ընկալեալ զպատ_
գամս պատուիրանի իմոյ ծածկես
ցես յանձին քում : * Լուիցէ իմաստու_ 2
թեան ունկն քո : և առակեսցես ըզ
սիրտ քո 'ի հանճար : Ի՛սկ ածանդես_
ցես զնոսա որդւոյ քում 'ի խրատ :
3 * Զի եթէ զիմաստութիւն կոչեսցես 'ի
քեզ . և հանճարոյ տացես զանձն քո :
4 * Ի՛սկ եթէ խնդրիցես զնա իբրև զար
ծաթ ընտիր . և իբրև զգանձս քննես
5 ցես զնա : * Յայնժամ 'ի միտ առցես
զերկիւղ Տն : և զգիտութիւն Այ գտ
6 ցես : * Զի Տր տայ զիմաստութիւն . և
յերեսաց նր գիտութիւն և հանճար :
7 * Ի՛սկ գանձէ ուղղոց զփրկութիւն . վե
8 րակացու լինի գնացից նց : * Պահել
զճանապարհս իրաւանց . և զճանա_
պարհս երկիւղածաց իւրոց ամրացու
9 ցէ : * Յայնժամ 'ի միտ առցես զար_
դարութիւն և զիրաւունս . և ուղղեսցես
10 զամ՛ շաւիղս բարութեան : * Զի եթէ
եկեսցէ իմաստութիւն 'ի միտս քո . և
զհանճար անձին քում բարի համարես
11 ցիս լինել : * Խորհուրդ բարեաց զգու
շասցի զքև . և միտք սրբք պահեսցեն
12 զքեզ : * Զի ապրեցուսցեն զքեզ 'ի
ճանապարհէ չարէ . և յառնէ՝ որ խօ_
13 սիցի և ոչինչ հաւատարիմ : * Ո՛հ որոց
թողեալ են զճանապարհս ուղիղս՝
գնալ 'ի ճանապարհս խաւարինս :
14 * Ուրախ լինին ընդ չարիս . և խնդայ_
15 ցեն ընդ խոտորումն չարութեան : * Որոց
թիւրք են ճանապարհք իւրեանց՝ և
16 կամակորք շաւիղք նոցա : * Հեռի առ
նել զքեզ յուղիղ ճանապարհէ . և օտա
րացուցանել յարդար խորհրդոց : ( որ_
դեակ՝ մի հասցեն քեզ խորհուրդք
17 չարք : ) * Որոց թողեալ իցէ զուսումն
մանկութեան : և մոռացեալ զուխտն
18 Ածեղէն : * Զի եդ մերձ 'ի մահ
զտուն իւր . և մօտ 'ի դժոխս ( ընդ երկ
19 րածինս ) զշաւիղս իւր : * Ամենեքեան՝
որք գնան ընդ նա՝ ոչ դարձցին անդ
րէն : ( այլ և 'ի զղջումն ևս եկեսցեն . )
և ոչ ժամանեսցեն 'ի ճանապարհս ու_
ղիղս : և ոչ հասցին 'ի տարեկանս կեն
20 դանութեան : * Զի եթէ գնացեալ էր
նոցա 'ի ճանապարհս բարիս . գտանէին
արդեօք զշաւիղս արդարութեան, զդիւր
ինս : քաղցրացեալք եղիցին բնակիչք
երկրի : անմեղք մնասցեն 'ի նմա :
21 * Զի անմեղք բնակեսցին յերկրի : և
22 անարատք մնասցեն 'ի նմա : * || Ճանա
պարհք ամպարշտաց կորիցեն յերկրէ .
և անօրէնք մերժեսցին 'ի նմանէ :

|| Յոբ. 18.17.

## Գլ : Գ :

1 Որդեակ՝ զօրէնս իմ մի մոռանար :
և զբանս իմ պահեսցէ սիրտ քո :
2 * || Զի ընդերկարութիւն կենաց . և ամք
կեն_

|| Օր. 8. 1. և 30.16.

կենդանութեան. եւ խաղաղութիւն յաւելցին քեզ: 3 *Ողորմութիւն եւ հաւատք ՚ի քէն մի պակասեսցեն: արկ զնո՛ ընդ պարանոց քո. եւ գրեա՛ զնո յլնդարձակութեան սրտի քո: 4 *Եւ գտցես շնորհս. եւ խորհեսցիս զբարիս առաջի Տեառն եւ մարդկան: 5 *Լեր յուսացեալ ՚ի Տէր յամ սրտէ քումմէ: եւ յիմաստութիւն քո մի հպարտանար: 6 *Յամ ճանապարհս քո ծանի՛ր զնա: զի ուղիղ արասցէ զշաւիղս քո: (եւ ոտն քո մի գայթագղեսցի:) 7 *||Մի լինիր իմաստուն յաչս անձին քո: այլ երկի՛ր ՚ի Տէ. եւ խոտորեա՛ յամ չարութենէ: 8 *Յայնժամ բժշկութիւն եղիցի մարմնոյ քում. եւ դարման ոսկերաց քոց: 9 *||Պատուեա՛ զՏր ՚ի քոյոց արդար վաստակոց: եւ հան նմա պտուղ ՚ի քոց արդարութեան արմտեաց: 10 *Զի լցցին շտեմարանք քո լիութեամբ ցորենոյ. եւ հնձանք գինեաւ քում առաւել եւ բղխեսցին:

|| Հռոմ. 12. 16. || Տոբէ. 4. 7. Ղուկ. 14. 13.

11 *||Որդեակ մի լքանիր ՚ի խրատու Տն: եւ մի լուծանիր՝ յանդիմանեալ ՚ի նմանէ: 12 *Զի զոր սիրէ Տր՝ խրատէ. տանջէ զամենայն որդի. զոր ընդունի: 13 *Երանեալ է այր՝ որ եգիտ զիմաստութիւն: եւ մահկանացու՝ որ ետես զհանճար: 14 *Զի լաւ է զվաճառն զայն գանձել. քան զգանձս ոսկւոյ եւ արծաթոյ: 15 *Պատուականագոյն է քան զականս պատուականս. (եւ ոչ ինչ է չար. որ հակառակ կայցէ նմա: յայտնի է ամենեցուն. որք մերձին առ նա:) եւ ամ ինչ՝ որ պատուական է. չարժէ զնա: 16 *Զի երկայն աւուրք՝ եւ ամք կենաց ՚ի յաջմէ նորա: եւ յահեկէ նորմէ փառք եւ մեծութիւն: ՚ի բերանոյ նր բղխի արդարութիւն: զօրէնս՝ եւ զողորմութիւն ՚ի լեզուի նորա կրէ: 17 *Ճանապարհք նր, ճանապարհք բարեաց. եւ ամ շաւիղք նր խաղաղութեամբ: 18 *Փայտ կենաց է ամենեցուն. որք պատսպարին ՚ի նա: եւ որք յենուն ՚ի նա՝ իբրեւ ՚ի Տր հաստատունք: 19 *Այծ իմաստութեամբ հիմնեաց զերկիր: պատրաստեաց զերկինս խորհրդով: 20 *Եւ հանճարով իւրով զանդունդս պատառեաց: եւ ամպք հոսեցին զանձրեւ: 21 *Որդեակ՝ մի լքանիր: պահեա՛ զխորհուրդս իմ, եւ զիմաստութիւն: 22 *Զի կեցցէ անձն քո. եւ շնորհք եղիցին ՚ի վիզ պարանոցի քում: եղիցի բժշկութիւն մարմնոյ քում. եւ դարման ոսկերաց քոց: 23 *Զի գնասցես յուսով խաղաղութեամբ յամ ճանապարհս քո. եւ ոտն քո ոչ գայթագղեսցի: 24 *Զի եթէ նստիցես՝ աներկիւղ լիցես: եւ եթէ ննջիցես՝ քաղցր ՚ի քուն լիցիս:

|| Եբրայ. 12. 5. Յայտ. 3. 19.

25 *Եւ ոչ երկիցես ՚ի զարհուրմանց ՚ի վր հասելոց ամպարշտաց. եւ յարշաւանաց ՚ի վերայ եկելոց: 26 *Զի Տր եղիցի ՚ի վր ամ ճանապարհաց քոց: եւ հաստատեսցէ զոտն քո. զի մի սասանեսցի: 27 *Մի յապաղեր բարի առնել կարօտելոյն. յորժամ ձեռնհաս իցես օգնել նմա: 28 *Մի ասիցես թէ երթ՝ եւ եկեսջիր. եւ վաղիւ տաց: զի կարող ես իցես բարի առնել: քանզի՝ ոչ գիտես. զինչ վաղիւն ծնանիցի քեզ:

Բնչ. հա- թող իցէ.

29 *Մի նիւթեր բարեկամի քում չարիս, որ յեցեալ եւ յուսացեալ իցէ ՚ի քեզ: 30 *Մի թշնամանասէր լինիր մարդոյ ՚ի տարապարտուց. զի մի չար ինչ գործիցէ քեզ: մի ստանար նախատինս յարանց չարաց. 31 *||եւ մի նախանձիր ընդ ճանապարհս նց: 32 *Պղծանք պիղծ է առաջի Տն ամ անօրէնն. ընդ արդարս ոչ հաղորդին: 33 *Անէծք Տն ՚ի տունս ամպարշտաց. յարկք արդարոց օրհնին: 34 *Տէր ամբարտաւանից հակառակ կայ. տայ շնորհս խոնարհաց: 35 *Զփառս իմաստունք ժառանգեսցեն: իսկ ամպարիշտք բարձրացուցին զանարգանս:

|| Սաղմ. 36. 1.

## Գլ: Դ.

1 Լուարուք մանկունք զխրատ հօր. եւ անսացէք, ճանաչել զիմաստութիւն: 2 *Զի պարգեւս բարեաց պարգեւեցից ձեզ. զօրէնս իմ մի թողուք: 3 *Զի որդի եղեալ եմ եւ ես հպատակ հօր իմոյ. եւ սիրեցեալ յաչս մօր իմոյ: 4 *Որք ուսուցանէին զիս՝ եւ ասէին. հաստատեսցի բան մեր ՚ի սրտի քում. պահեա՛ զբան մեր՝ եւ կեաց: 5 *Ստացիր զիմաստութիւն. ստացիր զհանճար՝ եւ մի մոռանար. եւ մի արհամարհեր զպատգամս բերանոյ իմոյ: Եւ մի խոտորիր ՚ի բանից շրթանց իմոց: 6 *Մի թողուր զնա. եւ պատսպարեսցէ զքեզ. սիրեա՛ զնա. եւ պահեսցէ զքեզ: 7 *Սկիզբն զգօնութեան ստացիր զիմաստութիւն. եւ յամ ստացուածս քո ստացիր զհանճար: 8 *Շուրջ փակեա զնովաւ՝ եւ բարձրացուսցէ զքեզ. մեծարեա՛ զնա՝ զի գրկս արկցէ զքեւ: 9 *Զի տացէ գլխոյ քում զպսակ շնորհաց. եւ պսակաւ փափկութեան վերակացու լինիցի քեզ: 10 *Լուր որդեակ՝ եւ ընկալ զբանս իմ: զի բազմասցին ամք կենաց քոց: (եւ յաձախսեցեն ճանապարհք կենաց քոց:) 11 *Զճանապարհս իմաստութեան ուսուցանեմ քեզ. խելամուտ առնել զքեզ ուղիղ շաւղաց: 12 *Զի եթէ գնասցես, ոչ խափանեսցին գնացք քո: եւ եթէ

ընթանայցես, ոչ վաստակեսցիս։
* Բուռն հար զխրատուէ իմմէ. եւ մի 13
թողուցուս. այլ պահեա զնա անձին
քում ՚ի կեանս։ * ՚Ի ճանապարհս ամ 14
պարշտաց մի երթայցես. եւ մի նախան
ձիցիս ընդ ճանապարհս անօրինաց։
* Յո՛ր ՚ի տեղւոջ ուր բանակիցին՝ ընդ 15
այն մի գնայցես. խոտորեա՛ց ՚ի նոցա_
նէ. եւ խորշեա՛ց անտի։ * Զի ոչ 16
ննջեն. եթէ ոչ չար գործեն. բար_
ձեալ է քուն նոցա՝ եւ ոչ ննջեն։ * Որք 17
ուտեն զկերակուրս ամպարշտութե.
եւ գինեաւ անօրէնութե արբենան։
* Ճանապարհք արդարոց իբրեւ զլոյս 18
ծագին. առաջնորդեն՝ եւ լուսաւո_
րեն. մինչեւ տիւն ծագեսցի։ * Ճա_ 19
նապարհք ամպարշտաց խաւարինք.
եւ ոչ գիտեն՝ զիարդ գայթագղին։
* Որդեակ՝ իմոյ իմաստութե անսա. 20
եւ իմոց բանից մատո՛ զունկն քո։
* Զի մի պակասեսցին աղբիւրք քո. 21
պահեա զնոսա ՚ի սրտի քում։
* Քանզի կեանք են՝ որոց գտանենն 22
զնոսա. եւ ամ մարմնոյ՝ բժշկութի։
* Ամ պահպանութբ պահեա զսիրտ 23
քո. զի ՚ի սոցանէ են ելք կենաց։
* Հերա՛ց արա ՚ի քէն զբերան կամա_ 24
կոր. եւ զշրթունս անիրաւս մերժեա՛
՚ի քէն։ * Աչք քո ուղիղ հայեսցին. 25
եւ արտեւանունք քո արդար ակնարկես
ցեն։ * Շաւիղս ուղիղս արասցես 26
ոտից քոց. եւ զճանապարհս քո ուղ_
ղեսցես։ * Մի՛ խոտորեսցիս յաջ՝ եւ 27
մի յահեակ. դարձո՛ զոտն քո ՚ի ճա_
նապարհէ չարէ. զի զճանապարհս որ
յաջմէ են՝ գիտէ Տ. թիւրք են ճանա
պարհք՝ որք ՚ի ձախմէ են։ այլ ինքն
Տր ուղիղ արասցէ զշաւիղս քո. եւ
զգնացս քո խաղաղութեամբ յա_
ռաջեսցուսցէ։

## Գլ: Ե·

Որդեակ՝ իմոյ իմաստութե անսա. 1
եւ իմոց բանից մատո՛ զունկն քո։
* Զի պահեսցես զխորհուրդս բա_ 2
րեաց. զիմաստութի շրթանց իմոց պատ
ուիրեմ քեզ։ Մի՛ հայիր ընդ կին
չար։ * Զի մեղր կաթէ ՚ի շրթանց 3
կնոջ պոռնկի. որ առ ժամանակ մի
պարարէ զքիմս քո։ * Բայց յետոյ դառ 4
նագոյն եւս գտցես քան զլեղի. եւ սրեալ
առաւել՝ քան զսուր երկսայրի։
* Վասնզի ոտք անզգամութե իջուցա_ 5
նեն զմերձաւորս նր մահու հանդերձ
՚ի դժոխս։ * Յո՛ հետքն նր ոչ են հաս_ 6
տատունք. զի ՚ի ճանապարհս կենաց
ոչ գնան. զեղխք են ճանապարհք նր՝
եւ ոչ յայտնիք։ * Արդ՝ որդեակ լո՛ւր 7
ինձ. եւ մի՛ ապախտ առնիցես զբանս իմ։
8 * Հեռի՛ արա ՚ի նմանէ զճանապարհս
քո։ եւ մի՛ մերձենար ՚ի դրունս տանց
9 նր։ * Զի մի՛ մատնեսցես օտարաց զկ
կեանս քո. եւ զստացուածս քո անողոր
10 մից։ * Զի մի՛ լցցին օտարք ՚ի զօրու_
թէ քումմէ. եւ մի՛ մտցեն վաստակք քո
11 ՚ի տունս այլոց։ * Յո՛ զղջանայցես յե
տոյ. յորժամ մաշիցին անդամք մարմնոյ
12 քոյ։ * Յո՛ ասիցես՝ թէ զիարդ ատե
ցի զխրատ. եւ ՚ի յանդիմանութեյ խո
13 տորեցաւ սիրտ իմ։ * Ոչ լսէի ձայնի
խրատտուի իմոյ. եւ ուսուցչի իմոյ ոչ
14 դնէի զունկն իմ։ * Սակաւիկ մի եւս
անկանէի ՚ի մէջ ամ չարեաց. ՚ի մէջ եկե
15 ղեցւոյ՝ եւ ժողովրդոց։ * Արբ ջուր
՚ի քոց ամանոց. եւ ՚ի քոց աղբերաց ջրհո
16 րոյ։ * Բղխեսցին քեզ ջուրք ՚ի քում_
մէ աղբերէ. եւ ՚ի քո հրապարակս
17 գնասցեն ջուրք քո։ * Յո՛ եղիցի քեզ
միայնոյ լինել. եւ մի՛ ոք օտար հաղոր_
18 դեսցի քեզ։ * Աղբիւր ջրոյ քո եղիցի
քեզ առանձին. եւ ուրախ լեր ը կնոջ
19 մանկութե քոյ։ * Եղն սիրոյ՝ եւ յաւանակ
քոց շնորհաց խօսեսցի ընդ քեզ. եւ քեզ
առանձինն եղիցի յամ ժամ. զի եթէ
զնորա սիրովն գայցես՝ բազմապատիկ
20 եղիցիս։ * Մի՛ յաճախեր առ օտար.
եւ մի՛ փարիր ՚ի գիրկս՝ որք ոչ քո իցեն։
21 * ‖ Վասնզի առաջի աչաց Տ. են ճանա
պարհք առն. եւ յամ շաւիղս նր գիտէ։ ‖ Յոբ. 34.21.
22 * Անօրէնութիք որսան զայր. եւ ՚ի տո
ռունս մեղաց շաղի իւրաքանչիւրոք։
23 * Մեռանի նա ընդ անխրատս՝ վն ան
խրատութե. եւ ՚ի բազմութէ կենաց
իւրոց արտաքս ընկեցաւ. եւ կորեաւ
վն անզգամութե իւրոյ։

## Գլ: Զ:

1 Որդեակ՝ եթէ լինիցիս երաշխաւոր
բարեկամի քում. մատնեսցես զկ
2 քեզ ՚ի ձեռս թշնամւոյն։ * Զի որո_
գայթք բուռն են առն շրթունք իւր.
եւ ըմբռնի բանիւ բերանոյ իւրոյ։
3 * Արդ՝ արա՛ որդեակ՝ զոր ինչ ես պատ
ուիրեմ քեզ՝ եւ կեցցես. զի անկար
՚ի ձեռս չարաց վասն բարեկամին քոյ։
Արդ սփնեա՛ց. եւ մի՛ լքանիր. յորդո_
րեա՛ եւ զբարեկամն՝ զոր առեր յերաշ
4 խի։ * Մի՛ տար քուն աչաց քոց.
եւ մի՛ նիրհումն արտեւանանց քոց։
5 * Զի ապրեսցիս իբրեւ զայծեամն ՚ի
հանգէց. եւ իբրեւ զհաւ յորոգայթից։
6 * Երթ առ մրջիւնն ով վատ. եւ նախան
ձեա՛ց ընդ ճանապարհս նր. լե՛ր իմաստ
7 նագոյն եւս քան զնա։ * Զի նր ոչ գոյ
երկրագործութի. եւ ոչ հարկադիր. եւ
ոչ այն՝ որ տագնապիցէ. եւ ոչ ընդ տե_
րամբք

րամբք է ։* Եւ պատրաստէ յամարայ 8
նոյ զկերակուր . և բազում համբարս
դնէ 'ի հունձս ։ ( կամ երթ առ մեղու .
և ուսի'ր՝ զիարդ գործունեայ է . գործ
նոյն որպէս պարկեշտութեամբ է . զորոյ զվաս_
տակս թագաւորք և տնանկք 'ի բժշ
կութի մատուցանեն . ցանկալի է ամենեցուն
և փառաւորեալ . զի թէպէտ և տկար
է զօրութեամբ . պատուեաց զիմաստու_
թիւն և յարգեցաւ ։ )* || Մինչև յերբ 9
անկեալ կաս ով վատ . կամ երբ 'ի քնոյ
զարթիցես ։* Փոքր մի ննջիցես . փոքր 10
մի նստիցես . փոքր մի նիրհիցես . փոքր
մի հանգուցանիցես զձեռս քո 'ի վր լան
ջաց քոց ։ * Ապա այնուհետև հասա 11
նիցի քեզ իբրև չար ճանապարհորդ
աղքատութիւն . և կարօտութիւն իբրև
զժիր սուրհանդակ ։ ապա եթէ ան_
դանդաղ լինիցիս . եկեսցէ իբրև զաղ
բիւր ամառն քո . և կարօտութիւն իբրև
զայր մի չար ինքնահալած լինիցի ։
*Այր անօրէն և անզգամ գնայ զճա 12
նապարհս թիւրս ։*Եւ նոյն ինքն ակն 13
արկէ ակամբ . և նշանակէ ոտամբ . և
ուսուցանէ նշանացի մատամբք ։
* Սիրտ խոտորեալ նիւթէ զչարիս . 14
յամենայն ժամանակի այնպիսին խռովու
թիւն առնէ քաղաքի ։ * Եւ վասն որոյ 15
յանկարծակի հասցի նմա կորուստ
իւր . հատումն և բեկումն անբժշկելի ։
* Զի խնդայ ընդ ամենայն . զոր ատէ Տր . 16
և խորտակի վասն պղծութեան անձին
իւրոյ ։ * Աչք թշնամանողի՝ լեզու ա_ 17
նիրաւ . ձեռք՝ որք հեղուն զարիւն ան
պարտ ։ * Եւ սիրտ՝ որ նիւթէ զխոր_ 18
հուրդս չարս . և ոտք՝ որք փութան
գործել զչարիս , ստամբեցին ։
*Բորբոքէ զստութիւն վկայ անիրաւ . և 19
արկանէ դատաստանս 'ի մէջ եղբարց ։
* Որդեակ՝ պահեա զօրէնս հօր քոյ . 20
և մի մերժեր զխրատ մօր քոյ ։
* Ընկալ զնա 'ի գլուխ քո հանապազ . 21
և արկ իբրև զմանեակ 'ի պարանոց քո ։
* Յորժամ գնասցես , ընդ քեզ տար 22
ջիր . և ընդ քեզ եղիցի ։ զի յորժամ
ննջիցես՝ պահեսցէ զքեզ ։ և յորժամ
յառնիցես՝ խօսակից իցէ քեզ ։ * Զի 23
պատուիրան ճրագ է . և օրէնք լոյս,
և ճանապարհ կենաց՝ յանդիմանու_
թիւն խրատու ։ * Պահել զքեզ 'ի կնո_ 24
ջէ առն . և 'ի չարախօսութենէ օտար
լեզուի ։ * Որդեակ մի յաղթեսցէ քեզ 25
գեղոյ ցանկութիւն ։ և մի ըմբռնեսցիս
աչօք քովք ։ և մի յափշտակեսցիս ար_
տեւանամբքն իւրովք * Զի գինք կնոջ պոռն 26
կի՝ որչափ նկանակի միոյ հացի է ։ քան
զի կին չար զարանց պատուականաց
զոգիս որսայ ։ * Ածիցէ՞ ոք զհուր 27

Մատ. 24.32.

'ի գոգ՝ և զհանդերձն ոչ այրիցէ ։
28 *Կամ գնայցէ՞ ոք 'ի վր կայծականց
հրոյ . և զոտս իւր ոչ խարշիցէ ։
29 * Նոյնպէս՝ և որ մտանէ առ առնա_
կին՝ ոչ լինի առանց պատժոց ։ և ոչ
արդարասցի՝ ամ որ մերձենայ 'ի նա ։
30 * Ոչ ինչ են զարմանք եթէ ըմբռնես
ցի ոք 'ի գողութեան . գողանայ՝ զի լցուս
31 ցէ զանձն իւր քաղցեալ ։ * Ապա եթէ
ըմբռնեսցի , եօթնպատիկ տուժեսցի .
և զամ ինչս իւր տուեալ փրկեսցէ
32 զանձն իւր ։ * Իսկ որ շնայ , առ պակա
սութեան մտաց՝ զկորուստ անձին իւր
33 ում ստանայ ։ * Ցաւս և անարգանս
կրէ . և նախատինք նորա՝ ոչ ջնջես_
34 ցին յաւիտեան ։ * Լի է նախանձու
սրտմտութեան առն նորա ։ և ոչ խնայեսցէ
35 յաւուր դատաստանի ։ * Եւ ոչ փո_
խանակեսցէ . և ոչ ընդ միոյ իրիք փր_
կանաց զթշնամութիւն ։ և ոչ վճարես_
ցի բազում կաշառօք ։

## Գլ ։ Է ։

1 Որդեակ՝ պահեա զբանս իմ . և ըզ
պատուիրանս իմ ծածկեա յանձին
քում ։ որդեակ՝ պատուեա զՏէր՝ և
զօրասցիս . և բաց 'ի նմանէ յայլ ու_
2 մեքէ մի երկնչիցիս ։ * Որդեակ պա_
հեա զպատուիրանս իմ, և կեցցես ։ և
զբանս իմ իբրև զբիբ աչաց ։
3 * Յեռ զնոսա ընդ մատունս քո . և գրեա
4 յընդարձակութիւն սրտի քոյ ։ * Ասա
իմաստութեան քոյր քեզ լինել ։ և զհան
5 ճար կոչեա քեզ ծանօթ ։ * Զի պա_
հեսցէ զքեզ 'ի կնոջէ օտարէ և 'ի չա_
րէ ։ յորժամ բանիւք զքեզ 'ի պատ_
6 րանս արկանիցէ ։ * 'Ի պատուհանից
տան իւրոյ 'ի հրապարակս կարկառեալ ։
7 * Եւ տեսանիցէ յանմիտ մանկանց .
զպակասամիտն յերիտասարդաց ։
8 * Որ անցանիցէ ընդ հրապարակն
առ անկեամբ գնայցէ տան նորա ։
9 * Եւ խօսեսցի ընդ խաւար երեկոյին .
յորժամ դադարումն՝ և մութն գի_
10 շերոյն իցէ ։ * Եւ ահա կինն ընդ առաջ
լինիցի նմա պոռնկութեան դիմօք . որ
յիմարեցուցանէ զմիտս երիտասար_
դաց ։ որ արբեալ և պակշոտեալ ։
11 * Եւ 'ի տան ոչ դադարեն ոտք նորա ։
12 * Զի ժամանակ ինչ արտաքոյ յածի ։
և ժամանակ ինչ 'ի հրապարակս ։ առ
ամ անկեան դարանակալ լինի ։
13 * Ապա բուռն հարեալ համբուրեաց
զնա . և լրբենի երեսօք ասէ ցնա ։
14 * Ուխտք խաղաղութեան են ինձ այսօր .
15 հատուցանեմ զաղօթս իմ ։ * Վասն իրի
իսկ ելի ընդ առաջ քո ։ ցանկացեալ
16 երեսաց քոց գտի զքեզ ։ * Նրիզապատ

պնտեցի զգահոյս իմ։ եգիպտացի պաստառակալօք լցեալ զարդարեցի։ 17 *Քրքմացան պատրաստեցի զանկողինս իմ։ և զտուն իմ կինամոնով խնկեցի։ 18 *Եկ՛ և վայելեսցուք սիրով մինչև յառաւօտն. եկ՛ և խաղասցուք ցանկութբ ։ 19 * Զի ոչ է այր իմ ՚ի տան։ այլ գնացեալ է ՚ի ճանապարհ հեռի։ 20 * Զքսակն արծաթոյ ՚ի ձեռին իւրում առեալ է ։ յետ բազմաց աւուրց թէ ուրեք գայցէ ՚ի տուն իւր։ 21 *Նա՛ մոլորեցոյց զնա բազում խօսիւք . և խեղդիւք շրթանց իւրոց վարանեաց զնա։ 22 * Նա գնաց զկնի նր յիմարեալ իբրև զարջառ ՚ի սպանումն . և իբրև զշուն տռամբ։ 23 *Կամ իբրև զեղջերու հարեալ նետիւ ընդ լերդակողմն։ և փութայ իբրև զհաւ ՚ի ծուղակս. ոչ գիտէ՝ թէ վն անձին կորստեան ընթանայ ։ 24 *Արդ՝ որդեակ լուր ինձ . և անսա բանից բերանոյ իմոյ։ 25 *Մի խոտորեսցի սիրտ քո ՚ի ճանապարհս նր. և մի մոլորեսցիս ՚ի շաւիղս նորա։ 26 * Զի զբազումս տապաստ արկեալ է նորա խոցոտելով . և անթիւք են սպանեալքն ՚ի նմանէ ։ 27 * Ճանապարհք դժոխոց են տուն նորա ։ որք իջուցեն ՚ի շտեմարանս մահու։

## Գլ ։ Ը ։

1 Վասն այսորիկ դու զիմաստութի քարոզեսցես ։ զի հանճար ձայնատու լիցի քեզ ։ 2 *Բանզի ՚ի վերայ լերանց գլխաւորացէ ։ և ՚ի մէջ շաւղաց հաստատեալ կայ ։ 3 *Առ դրունս հզօրաց սպասէ . և ՚ի մուտս օրհնի ։ 4 * Զձեզ աղաչեմ, ով մարդիկ . և բաշխեմ զբարբառ իմ որդւոց մարդկան ։ 5 *Իմացարո՛ւք անմեղք զխորագիտութի ։ և անխրատք դի՛ք ՚ի սիրտս ձեր ։ 6 *Լուարո՛ւք ինձ . զի զպարկեշտս բարբառիմ . և բղխեմ ՚ի շրթանց իմոց զուղղութի ։ 7 * Զճշմարտութի խոկայ կոկորդ իմ ։ և պիղծք են առաջի իմ շրթունք սուտք ։ 8 *Արդարութբ են ամ բանք բերանոյ իմոյ . և ոչ գոյ ՚ի նոսա ծռութի՝ և ոչ թիւրութի ։ 9 *Ամենայն ինչ ուղիղ է իմաստնոց . և յարմարեալ է այնոցիկ՝ ոյք գտանեն զգիտութի ։ 10 *Ընկալարո՛ւք զխրատ՝ և մի զարծաթ ։ և զգիտութի առաւել քան զոսկի ընտիր ։ ( ընտրելի է հանճար քան զոսկի մաքուր ։ ) 11 *Նա՛ լաւագոյն է իմաստութի քան զականս պատուականս ։ ամ ինչ պատուական չարժէ զնա ։ 12 *Ես իմաստութի բնակեմ ՚ի խորհրդեան ։ զգիտութի և զհանճար կոչեմ յիս ։ 13 *Երկիւղ Տն ատեայ զանիրաւութիւն ։ զթշնամանս՝ զամբարտաւանութիւն . և զճանապարհս չարեաց . և զբերան երկլեզու ատականէ ։

14 *Իմ է խորհուրդ՝ և զգուշութի ։ իմ 15 է հանճար՝ և իմ զօրութիւն ։ *Ինև թագաւորք թագաւորեն ։ և հզօրք 16 գրեն զարդարութի ։ *Ինև մեծամեծք մեծանան ։ և բռունք ինև ունին 17 զերկիր ։ *Ես՝ որք զիս սիրեն՝ սիրեմ ։ և որք զիս խնդրեն , գտցեն շնորհս ։ 18 *Մեծութի և փառք իմ են ։ ստացուածք բազմոյ՝ և արդարութի ։ 19 *Լաւ է զիս ստանալ՝ քան զոսկի . և զականս պատուականս ։ և արդիւնք իմ լաւագոյնք են քան զարծաթ ընտիր ։ 20 * ՚Ի ճանապարհս արդարութե գնամ ։ և ՚ի մէջ շաւղաց ճշմարտութե 21 շրջիմ ։ * Զի բաշխեցից սիրելեաց իմոց զմեծութի ։ և զգանձս նց լցուցից բարութբ ։ ( եթէ պատմեցից ձեզ զհանապազորդ լինելոցսն . և յիշեցուցից զայն . որք յաւիտից համարեալք են ) 22 * Տր ստացաւ զիս ՚ի սկիզբն ճանապարհաց իւրոց ՚ի գործս իւր ։ յառաջ քան զյաւիտեանս հաստատեաց զիս ։ 23 * ՚Ի սկզբանէ . յառաջ քան զերկիր 24 առնել ։ *Նա՛ նախ քան զանդունդս գործել ։ և յառաջ քան զբղխել աղբե25 րաց ջուրց ։ *Նա՛ նախ քան զլերինս հաստատել ։ և յառաջ քան զամ բլուրս 26 ծնաւ զիս ։ * Տր արար զշէնս՝ և զանշէնս ։ և զեզերս բնակեալս ՚ի ներքոյ 27 երկնից ։ *Յորժամ պատրաստէր զերկինս՝ ընդ նմա էի ։ և մինչ զատուցանէր զաթոռ իւր ՚ի վերայ հողմոց ։ 28 *Նա՛ յորժամ զօրաւոր առնէր զամպս վերինս ։ յորժամ անսխալ դնէր զաղ29 բիւրս ՚ի ներքոյ երկնից ։ * ՚Ի դնել ծովու զգուշութե նր ։ զի ջուրք մի անցցեն ընդ աւին նր ։ ՚ի ժամանակի՝ յորժամ հաստատուն դնէր զհիմունս երկ30 րի ։ *Ես էի առ նմա պատշաճեալ ։ ես էի՝ որով ուրախ լինէր Տր հանապազ ։ և ցնծայի առաջի նր յամ ժամ ։ 31 *Յորժամ զուարճացեալ էր զտիեզերս բովանդակել ։ և ուրախ լինէր յորդիս 32 մարդկան ։ *Արդ՝ որդեակ . լուր ինձ ։ երանելիք են՝ որք զճանապարհս իմ 33 պահեն ։ *Լուարո՛ւք զիմաստութի և իմաստունք լերուք . և մի պաշարի34 ցիք ։ *Երանելի է այր , որ լուիցէ ինձ . և մարդ , որ զճանապարհս իմ պահիցէ ։ որ տքնիցի առ դրունս իմ հանապազ . և պահիցէ զսեամս մտից 35 իմոց ։ * Զի որ զիս գտանիցէ՝ գտանիցէ զկեանս . և ընդունիցի զփրկութի ՚ի Տէ ։ Ճանապարհք իմ են ճանապարհք կենաց ։ և պատրաստին կամք

իմ

իմ 'ի Տէ: 36 *Իսկ որք յիս մեղանչեն՝ ամբարշտեն յանձինս իւրեանց: և որք ատեն զիս՝ սիրեն զմահ:

## ԳԼ. Թ.

1 Իմաստութիւն շինեաց իւր տուն. և կանգնեաց սիւնս եօթն: 2 *Եզեն զզենլիս իւր. և խառնեաց 'ի խառնարանս զգինի իւր. և պատրաստեաց զսեղան իւր: 3 *Եւ առաքեաց զծառայս իւր՝ կոչել բարձր քարոզութեամբ 'ի խառնելիս իւր: 4 *Եւ ասէ՝ որ ոք իցէ անզգամ՝ եկեսցէ առ իս: և ցպակասամիտս ասէ: 5 *Եկայք՝ կերայք 'ի հացէ իմմէ՝ և արբէք զգինի իմ. զոր խառնեցի ձեզ: 6 *Թողէք զանզգամութիւն, և կեցջիք. խնդրեցէք զիմաստութիւն, զի ապրեսջիք: և ուղղեցէք գիտութեամբ զհանճար: և ուղիղ ճանապարհաւ իմացարուք զխրատ: 7 *Որ խրատէ ըզչարս՝ առցէ անձին իւրում անարգանս: և որ յանդիմանէ զամբարիշտն, ատեայ զանձն: 8 *Մի՛ յանդիմաներ զչարս՝ զի մի՛ ատեսցեն զքեզ: յանդիմանեա՛ զիմաստունն. և սիրեսցէ զքեզ: (զանմիտն. և յաւելցի ատել զքեզ:) 9 *Տուր իմաստնոյն պատճառս՝ և իմաստնագոյն ևս լիցի: ծանո՛ արդարոյն՝ և յաւելցի ընդունել: 10 *‖Սկիզբն իմաստութեան՝ երկիւղ Տն: և խորհուրդ սրբոց հանճար: (իմանալ զօրէնս՝ մտաց առատաց է:) 11 *Այսու օրինակաւ բազում ժամանակս կեցցես: և յաւելցին քեզ ամք կենաց: 12 *Որդեակ՝ եթէ իմաստուն լինիցիս. անձին քում իցես՝ և ընկերացն. եթէ անզգամ իցես՝ միայն պեղեսցես զչարիս: (որ հաստատի 'ի ստութեան՝ այնպիսին զհողմս արածէ: և նոյն հալածէ զթռչունս թևաւորս: քանզի եթող զճանապարհս այգւոյ իւրոյ: և 'ի շաւղաց անդւոյ իւրոյ մոլորեալ է: գնայ ընդ անջուր՝ և ընդ անապատ: և զերկիր կարգեալ 'ի ծարաւուտ: և ժողովէ ձեռօք իւրովք զանպտղութիւն:) 13 *Կին անզգամ և յանդուգն կարօտ լինի հացի. և որ ո՛չ գիտէ զամօթ: 14 *Նստաւ առ դուրս տան իւրոյ աթոռով յայտնապէս 'ի հրապարակս: 15 *Կոչէ զանցաւորս՝ որք գնան ուղիղ զճանապարհս իւրեանց: 16 *Որ ոք իցէ 'ի ձէնջ առաւել անմտագոյն՝ խոտորեսցի առ իս: և պակասամտացդ հրաման տամ, և ասեմ: 17 *Օհաց գաղտնի մտադիւր կերիջիք. և զջուր գաղտնի, ախորժելով արբջիք: 18 *Եւ ո՛չ գիտէ եթէ երկրածինք առ նմա կորնչին. և յատակս դժոխոց հասանեն: (այլ 'ի բաց վազեա՛ և մի՛ յամեր 'ի տեղւոջ նորա: և մի՛ հաստատեր զակն քո 'ի նա: քանզի այնպէս անցցես ընդ ջուր օտար: և անցանիցես ընդ գետն օտարական: և 'ի ջրոյ օտարէ 'ի բաց լինիցիս: և յօտար աղբերէ մի՛ ըմպիցես: զի բազում ժամանակս կեցցես: և յաւելցին քեզ ամք կենաց:)

‖ Առակ. 1. 7. Սաղմ. 110. 10. Սիրաք. 1. 16.

# ԱՌԱԿՔ ՍՈՂՈՄՈՆԻ:

## ԳԼ. Ժ.

1 Որդի իմաստուն ուրախ առնէ զհայր. որդի անմիտ տրտմութիւն է մօր: 2 *Ոչ ինչ օգնեսցեն գանձք անօրինաց. այլ արդարութիւն փրկէ 'ի մահուանէ: 3 *Ոչ սովամահ առնէ Տր զանձն արդարոյ: բայց զկեանս ամբարշտաց կործանեսցէ: 4 *Աղքատութիւն զայր խոնարհեցուցանէ. ձեռք ժրաց մեծացուցանեն: Որ ջանայ ստութեամբ. նա արածէ զհողմս. նոյն իսկ ինքն հետևի հաւուց թռուցելոց: 5 *Որ ժողովէ ներհնձում, որդի իմաստուն է. այլ որ ննջէ յամարայնի՝ որդի պատկառանաց: Որդի խրատեալ իմաստուն եղիցի: և անմիտն 'ի ծառայութիւն վարեսցի. Ապրեցաւ 'ի խորշակէ որդի իմաստուն: խորշակահար լինի յամարայնի որդի անօրէն: 6 *Օրհնութիւն Տն 'ի գլուխս արդարոյ: զբերանս ամբարշտաց ծածկեսցէ սուգ տարաժամ: 7 *Յիշատակ արդարոց հանդերձ գովութեամբ: և անուն ամպարշտաց շիջցի: 8 *Իմաստունն սրտիւ ընկալցի զպատուիրանս: և ցոփն շրթամբք գայթագղելով կործանեսցի: 9 *Որ գնայ միամտութեամբ՝ գնայ յուսով. իսկ որ թիւրէ զճանապարհս իւր՝ յայտնի եղիցի: 10 *‖Որ ակնարկէ ակամբ նենգութեամբ. ժողովէ արանց զտրտմութիւն: Իսկ որ յանդիմանէ համարձակութեամբ, առնէ զխաղաղութիւն: 11 *Աղբիւր կենաց [illegible] բերան արդարոյ: զբերան ամբարշտի ծածկեսցէ կորուստ: 12 *Ատելութիւն գրգռէ զհակառակութիւն: ‖ և զամենեսին որք ոչն հակառակին, ծածկէ սէր: 13 *Որ 'ի շրթանց իւրոց բղխէ զիմաստութիւն. իբրև գաւազանաւ հարկանէ զայր անմիտ: 14 *Իմաստունք ծածկեն զիմաստութիւն. բերան յանդուգն, մերձ է 'ի բեկումն: 15 *Ստացուած մեծատանց քաղաք ամուր: և բեկումն ամբարշտաց աղքատութիւն: 16 *Գործք արդարոց կեանս առնեն. և պտուղք ամբարշտաց մեղք: 17 *Ճանապարհս կենաց պահէ Տր: խրատ առանց յանդիմանութեան մոլար է: 18 *Ծածկեն զթշնամութիւն շրթունք արդարք: իսկ

‖ Սիրաք. 27. 25.

‖ 1. Պետ. 4. 8. 1. Կորն. 13. 4.

որք

որք 'ի վեր հանեն զբամբասանս,
անզգամք են։ 19 *Շատախօս լինելով
ոչ զերծցիս 'ի մեղաց. եթէ խնայես
'ի շրթունս քո, իմաստուն լինիս։
20 *Արծաթ ընտիր է լեզու իմաստնոյ.
սիրտ ամբարշտի նուաղեսցի։ 21 *Շր-
թունք արդարոց ճանաչեն զբարձունս.
իսկ անզգամք 'ի կարօտութեան սատակես-
ցին։ 22 *Օրհնութիւն Տն 'ի գլուխ ար-
դարոց. և նոյն մեծացուցանէ. և ոչ
եւ յաւելանայ տրտմութիւն 'ի սիրտ նր։
23 *Ծիծաղելով գործէ անզգամն զչա-
րիս. իսկ իմաստութիւն առն՝ նիւթէ
զհանճար։ 24 *'Ի կորստեան շրջի ամբա-
րիշտն. ցանկութիւն արդարոց ընդու-
նելի է։ 25 *'Ի յանցանել մրրկի՝ եղծա-
նի ամբարիշտն. և արդարոյն խոյս
տուեալ՝ կեցցէ յաւիտեան։ 26 *Որպէս
ագոխ ատամանց վնասակար է՝ և ծուխ
աչաց. նոյնպէս և անօրէնութիւն՝ որոց
նովաւ վարին։ 27 *Երկիւղ Տն յաւելու
զաւուրս. ամք ամբարշտաց նուաղես-
ցին։ 28 *Յերկարի արդարոց ուրախու-
թիւն. յոյս ամպարշտաց կորիցէ։
29 *Ամրութիւն արդարոց երկիւղ Տն. և
խորտակումն այնոցիկ. որք գործեն
զչարիս։ 30 *Արդարն յաւիտեան ոչ
սասանեսցի. և ամպարիշտք մի՛ բնա-
կեսցեն յերկրի։ 31 *Բերան արդարոյ
բղխէ զիմաստութիւն. լեզու անիրաւի
սատակեսցի։ 32 *Շրթունք արանց ար-
դարոց կաթեն շնորհս. բերան ամ-
բարշտաց կործանի։

## ԳԼ. ԺԱ.

1 Կշիռ նենգութեան պիղծ է առաջի
Տն. կշիռ արդար ընդունելի է
նմա։ 2 *Ուր մտանեն թշնամանք, անդ
են և անարգութիւնք. իսկ ուրէ խոնար-
հութիւն՝ անդ և իմաստութիւն. բերան
խոնարհաց խօսի զիմաստութիւն։
3 *Կատարելութիւն ուղղոց առաջնոր-
դեսցէ նոցա. և գայթագղութիւն արհամար-
հողաց աւերեսցէ զնս։ 4 *‖Ոչինչ օգնես-
ցեն ինչք յաւուր բարկութեան. այլ ար-
դարութիւն փրկէ 'ի մահուանէ. ( մե-
ռաւ արդարն. և եթող զղջումն յոյժ.
յանդուգն՝ և ստնհարութիւն լինի կո-
րուստ ամբարշտաց.) 5 *Արդարութիւն
անարատի ուղղէ զճանապարհս. և
յամպարշտութիւն արկանէ անիրաւու-
թիւն։ 6 *Արդարութիւն արանց ուղղոց
փրկէ զնս. անմտութիւն կորնչին անօ-
րէնք։ 7 *'Ի վախճանիլ առն արդարոյ
ոչ կորնչի յոյս. բայց պարծանք ամ-
բարշտաց կորնչին։ 8 *Արդարն յորսոյ
զերծանի. և փոխանակ նր մատնի
ամբարիշտն։ 9 *'Ի բերանս ամբարշ-
տաց՝ որոգայթ քաղաքակցաց. իմաստ-
ութիւն արդարոց յաջողեալ է։
10 *Բարութիւք արդարոց յօրինեն զքա-
ղաք. և 'ի կորուստ ամբարշտաց եղև
ուրախութիւն։ 11 *Օրհնութեամբ արդա-
րոց բարձրանայ քաղաք. և բերանօք
ամբարշտաց կործանի։ 12 *Արհամար-
հէ զքաղաքակիցս այր պակասամիտ. և
այր իմաստուն զլռութիւն սիրէ։
13 *‖Այր երկխօս՝ յայտնէ զխորհուրդս
յատենի. իսկ հաւատարիմն հոգւով՝
ծածկէ զնս։ 14 *Որոց ոչ գոյ առաջ-
նորդութիւն՝ թօթափին որպ զտերև. փր-
կութիւն գտանի 'ի բազում խորհուրդս։
15 *Չարն առնէ զչարիս՝ յորժամ խառ-
նակի ընդ արդարոյն. և ատէ զբար-
բառ զգուշութեան։ 16 *Կին շնորհակա-
լու բարձր առնէ զփառս առն իւրոյ.
(աթոռ անարգութեան. կին՝ որ ատէ
զարդարութիւն. 'ի մեծութեան վատք կա-
րօտք լինին.) իսկ որք ժիրքն են՝ հաս-
տատին մեծութեամբ։ 17 *Անձին իւրում
գործէ բարիս ողորմածն. կորուսա-
նէ զմարմին իւր այր անողորմ։
18 *Ամբարիշտն գործէ զգործ անիրաւ-
ութեան. զաւակ արդարոց վարձ ճշմար-
տութեան։ 19 *Որդի արդար 'ի կեանս ծնա-
նի. հալածանք ամբարշտաց 'ի մահ։
20 *Պիղծք են Տն ճանապարհք թիւրք.
ընդունելիք են նմա ամ անարատք 'ի
ճանապարհս իւրեանց։ 21 *Որ ձեռնե-
րէց լինի 'ի տարապարտուց՝ առանց
պատժի ոչ լիցի. իսկ որ սերմանէ
զարդարութիւն, ընկալցի վարձս հաւա-
տարիմս։ 22 *Որպ գինտ ոսկի 'ի քիթ խո-
զի. նոյնպէս կնոջ չարի գեղեցկութիւն։
23 *Ցանկութիւն արդարոց ամ բարութք.
24 յոյս ամբարշտաց կորնչի։ *Էն՝ որք
զիւրեանց սերմանեն՝ և բազմապատիկ
առնեն. և են՝ որք յանիրաւութէ ժո-
25 ղովեն՝ և կարօտանան։ *Ամ անձն
օրհնեալ պարզամիտ է. և այր բարկա-
26 ցող՝ տգեղ է կերպարանօք։ *Որ խնայէ
'ի ցորեան, լքցէ զնա օտարաց. և որ
ճշգէ զցորեան՝ հրապարականեծ լիցի.
օրհնութիւն Տն 'ի գլուխ սփռողաց։
27 *Որ նիւթէ զբարիս՝ խնդրէ զշնորհս
բարութեան. իսկ որ խնդրէ զչար՝ հասցէ
28 նմա։ *Որ յուսայ 'ի մեծութիւն, այնպի-
սին կործանեսցի. իսկ որ օգնական լի-
29 նի արդարոց՝ ծագեսցի։ *Այ՛ որ ոչ
գայ զտամբ իւրով. նա զհողմն արա-
ծէ. և ծառայեսցէ անմիտն իմաստ-
30 նոյն։ *'Ի պտղոյ արդարութեան բուսա-
նի ծառ կենաց. բարձցին տարաժամ
31 որդիք անօրինաց։ *‖Եթէ արդարն
հազիւ կեցցէ՝ իսկ մեղաւորն և ամպա-
րիշտն ո՞ւր երևեսցի։

ԳԼ.

‖Սիրաք. 7. 13. Սոփոն. 1. 18.

'Ի վախճանել առն ամբարշտի ոչ ինչ է շիջ առէ զէ յոյս

‖Առ. 20. 19.

‖Ա Պետ. 4. 18.

## ԳԼ. ԺԲ.

1 Որ սիրէ զխրատ, սիրէ զիմաստութիւն. և որ ատէ զյանդիմանութիւն՝ անմիտ է ։ 2 * Լաւ է գտանել զշնորհս ՚ի Տեառնէ. իսկ այր անօրէն կարկեսցի ։ 3 * Ոչ յաջողեսցի մարդոյ յանիրաւութենէ ։ արմատք արդարոց ոչ հատցին ։ 4 * Կին ժրագլուխ պսակ է առն իւրում ։ որպէս որդն փայտի. նոյնպէս կորուսանէ զայր, կին չարագործ ։ 5 * Խորհուրդք արդարոց՝ իրաւունք ։ առաջնորդեն ամբարիշտք նենգութեամբ ։ — բանք 6 * Բանք ամբարշտաց նենգաւորք ։ բերան ուղղոց փրկէ զնոսա ։ 7 * Յոր կողմն և դարձցի ամբարիշտն՝ եղծանի ։ տունք արդարոց յերկարասցին ։ 8 * Բերան իմաստնոց գովի ՚ի մարդկանէ ։ իսկ խօթասիրտն արհամարհեսցի ։ — Սիրաք. 10.30. 9 * ‖ Լաւ է մարդ խոնարհութեամբ ծառայել անձին ։ քան անձին շուք եդեալ՝ և զհաց մուրանայցէ ։ 10 * Արդարն ողորմի անասնոց իւրոց ։ աղիք ամբարշտաց անողորմք են ։ — Սիրաք. 20.30. 11 * ‖ Որ գործէ զերկիր իւր՝ լցցի հացիւ ։ և որ զհետ երթայ դատարկութեան՝ լցցի աղքատութեամբ ։ որ ախորժէ զգինեաց դեգերմունս. թողցէ ՚ի բնակութիւնս իւր զանարգանս ։ 12 * Ցանկութիւնք ամբարշտաց չարք են ։ և արմատք բարեպաշտաց հաստատունք ։ 13 * Վասն մեղաց շրթանց անկանի յորոգայթս մեղաւորն ։ և արդարն զերծանի ՚ի նմանէ ։ ( քաղցրահայեաց զգըթութիւն գտցէ ։ որ պատահի ՚ի դրունս. նեղէ զանձն ։) 14 * Ի պտղոյ բերանոյ առն լցցի անձն իւր բարութեամբ ։ և հատուցումն շրթանց իւրոց հատուսցի նմա ։ 15 * Ճանապարհք անմտաց ուղիղ թուին առաջի նց ։ ունկնդիր լինի խրատու իմաստունն ։ 16 * Իսկ անմիտն առօրին յայտնէ զբարկութիւն իւր ։ ծածկէ զանարգանս իւր խորագէտն ։ 17 * Եւ՛ յայտնի զհաւատս պատմէ արդարն ։ վկայ անօրինաց նենգաւոր է ։ 18 * Են՝ որք բանիւք խրեանց խոցոտեն որպէս սրով ։ բայց լեզուք իմաստնոց բժշկեն ։ 19 * Շրթունք իմաստունք հաստատեն զվկայութիւն ։ վկայ վաղվաղակի ունի զլեզու անիրաւ ։ 20 * Նենգութիւն ՚ի սրտի չարանիւթի ։ իսկ որ առնէ ըղխաղաղութիւն՝ ուրախ լիցի ։ 21 * Ոչ է հաճոյ արդարոյ՝ և ոչ ինչ անիրաւ ։ իսկ ամբարիշտք լցցին չարեօք ։ 22 * Պիղծք են առաջի Տն շրթունք սուտք ։ իսկ որ առնէ զհաւատարիմս՝ ընդունելի է նմա ։ 23 * Այր իմաստուն աթոռ հանճարոյ ։ սիրտ անզգամաց պատահեսցի նզովից ։ 24 * Ձեռն ընտրելոց դիւրաւ յաղթեսցէ ։ նենգաւորք մատնեսցին ՚ի յափշտակութիւն ։ 25 * Բան ահաւոր՝ խռովեցուցանէ զսիրտ առն արդարոյ ։ աւետիք բարեաց ուրախ առնեն զնա ։ (արդարն իրաւախոհ սիրէ զանձն իւր. բարք ամբարշտաց մեղմեխք են ։) 26 * Արդարոց հասցեն բարութիւնք ։ ճանապարհք ամբարշտաց մոլորեցուսցէ զնոսա ։ 27 * Ոչ պատահեսցի որս նենգաւորի ։ ստացուած պատուական է այր բարի ։ 28 * Ի ճանապարհս արդարութեան կեանք ։ ճանապարհք ոխակալաց ՚ի մահ ։

## ԳԼ. ԺԳ.

1 Որդի խորագէտ հնազանդի հօր. որդի անհնազանդ ՚ի կորուստ եղիցի ։ 2 * Ի պտղոյ արդարութեան կերիցէ առատ ։ և անձինք անօրինաց սատակեսցին տարաժամ ։ 3 * Որ խնայէ ՚ի բերան իւր՝ զանձն իւր սիրէ ։ իսկ որ յանդուգն է շրթամբք, խռովէ զանձն ։ 4 * Ի կարօտութեան է ամ̅ վատ ։ ձեռք ժրաց ՚ի դարմանս ։ — կամ եւ ոչ; կամ ծոյլն 5 * Զբերան անիրաւ ատեայ արդար ։ իսկ ամբարիշտն ամաչէ. և ոչ ունի զհամարձակութիւն ։ 6 * Արդարութիւն պահէ զանմեղս ՚ի ճանապարհի ։ զամբարիշտս պիղծ առնեն մեղք ։ 7 * Են՝ որք մեծացուցանեն զանձինս՝ և զոչինչ ունին ։ և են՝ որք խոնարհեցուցանեն զանձինս՝ և լիք են մեծութեամբ բազմաւ ։ 8 * Փրկանք անձին մարդոյ՝ մեծութիւն իւր ։ իսկ աղքատն՝ ոչ հանդարտի պատուհասի ։ 9 * Լոյս արդարոց յամ ժամ ։ լոյս ամպարշտաց՝ շիջցի ։ ( Անձինք նենգաւորք մոլորեսցին ՚ի մեղս ։ այլ արդարք գթասցին՝ և ողորմեսցին ։) 10 * Անզգամն թշնամանօք գործէ զչարիս ։ իսկ որք իրաւախոհք են յանձինս, իմաստունք են ։ 11 * Մեծութիւն խուկեալ անիրաւութեամբ՝ պակասեսցի ։ իսկ որ Աստուածպաշտութեամբ ժողովէ, բազմասցի անձին իւրում ։ (լաւ է ՚ի սկզբան օգնել սրտիւ. քան վաղվաղակէ խոստանալ ։) 12 * Ե՛ կախեալ կայցէ զյուսոյ ։ արդարն ողորմի և տայ փոխ. ծառ կենաց է ցանկութիւն բարեաց ։ — Յոյս, որ յապաղէ՝ նեղէ զանձն 13 * Որ արհամարհէ զիրս՝ արհամարհեսցի ՚ի նոցանէ ։ որ երկնչի ՚ի պատուիրանէն Այ, առողջ լիցի ։ որդւոյ նենգաւորի բարի ինչ մի՛ եղիցի ։ ծառայի իմաստնոյ յաջողեսցին գործք իւր ։ և ուղղեսցին ճանապարհք նորա ։ 14 * Օրէնք իմաստնոյ աղբիւր կենաց ։ իսկ անմիտն ընդ որոգայթիւ մեռցի ։ 15 * Իմաստութիւն բարի տայ շնորհս ։ և ճանաչել զօրէնս՝ մտաց բարեաց է ։ ճանապարհք արհամար_

մար_

մարհողաց 'ի կորուստ ։ 16 * Ամ խորագէտ գործէ իմաստութբ. իսկ անմիտն տարածեաց յանձն իւր չարիս ։
17 * Թագաւոր յանդուգն՝ անկցի յորոգայթ ։ և հրեշտակ հաւատարիմ փրկէ զնա ։ 18 * Զաղքատութի և զանարգանս 'ի բաց բառնայ խրատ ։ և որ պահէ զյանդիմանութի, փառաւորեսցի ։
19 * Ցանկութիք բարեպաշտաց քաղցրացուցանեն զոգիս ։ գործք ամպարշտաց հեռի են 'ի գիտութէ ։ 20 * Որ գնայ ընդ իմաստունս՝ իմաստուն եղիցի ։ և որ թարթափի ընդ անզգամս՝ յայտնի լիցի ։ 21 * Զմեղաւորս հալածեն չարիք . և արդարոց հասցեն բարութիւնք ։
22 * Այր անարատ ժառանգեցուցանէ զորդիս որդւոց ։ գանձի արդարոց մեծութի ամպարշտաց ։ 23 * Արդարք վայելեսցեն 'ի մեծութէ, ամս բազումս ։ և անիրաւք կորնչին վաղվաղակի ։
24 * Որ խնայէ 'ի գաւազան, ատեայ զորդի իւր ։ իսկ որ սիրէ՝ խնամով խրատէ ։ 25 * Արդարն՝ յուտելն իւրում՝ յագեցուցանէ զանձն իւր ։ և անձինք ամպարշտաց կարօտք եղիցին ։

## Գլ. ԺԴ.

1 Իմաստունք կանայք շինեցին տունս իսկ անզգամքն ձեռօք իւրեանց կործանեցին ։ 2 * ‖Որ գնայ ուղիղ՝ երկնչի 'ի Տէ ։ և որ կամակոր 'ի ճանապարհս իւր, անարգեսցի ։ 3 * Ի բերանոյ անզգամաց գաւազան բարկութեան ։ շրթունք իմաստնոց պահեսցեն զնս ։

‖ Յոբ. 12.4.

4 * Ուր ոչ գոն եզինք՝ մսուրք սուրբք են ։ և ուր բազում արդիւնք են, յայտնի է եզին զօրութի ։ 5 * Վկայ հաւատարիմ, ոչ ստէ ։ բորբոքէ զստութիւն վկայ անիրաւ ։ 6 * Խնդրեսցես զիմաստութի առ 'ի չարաց՝ և ոչ գտցես ։ և զհանճար առ յիմաստնոց դիւրաւ ։
7 * Ամենայն ինչ հակառակ է անզգամին ։ զէն հանճարոյ՝ շրթունք իմաստունք ։ 8 * Իմաստութի խորագիտաց ծանիցէ զճանապարհս նոցա ։ անմտութի անզգամաց մոլորութբ ։ 9 * Տունք անօրինաց պարտաւորեսցին 'ի սրբութենէ ։ տունք արդարոց ընդունելիք են նմա ։ 10 * Սիրտ առն ընդ մտաւորի՝ տրտմութի է անձին իւրոյ ։ և յորժամ ուրախ լինի՝ չխառնի 'ի թշնամանս ։
11 * Տունք ամպարշտաց կործանեսցին ։ յարկք արդարոց օրհնեսցին ։
12 * Է ճանապարհ որ թուի յաչս մարդկան թէ ուղիղ իցէ . բայց կատարած նորա երթայ 'ի յատակս դժոխոց ։
13 * Ընդ ուրախութիս ոչ խառնի տրտմութի ։ բայց յետոյ ուրախութի 'ի սուգ դայ ։ 14 * Յիւրոց ճանապարհաց յագեսցի խստասիրտն ։ և 'ի խորհրդոց իւրոց ուղղեսցի այր բարերար ։
15 * Անմեղն հաւատայ ամենայնի բանի ։ իսկ խորագէտն դայ 'ի զղջումն ։ ( որդւոյ նենգաւորի ոչինչ եղիցի բարի . իսկ ծառայի իմաստնոյ՝ պատկանաւորք եղիցին գործք . և ուղղեսցին ճանապարհք նորա ։ ) 16 * Իմաստունն զարհուրեալ խոտորեցաւ 'ի չարէ ։ իսկ անզգամն յանձնապաստան խառնակի ընդ անօրինին ։ 17 * Արկասիրտն գործէ առանց խորհրդոյ ։ և այր իմաստուն յոյժ համբերէ ։ 18 * Բաժանեն անմեղք 'ի չարիս ։ իսկ խորագէտք զօրանան իմաստութբ ։ 19 * Գայթագղեսցին չարք առաջի բարեաց . և ամպարիշտք կողկողեսցին առ դրունս արդարոց ։
20 * ( Նայց բարեկամի իւրոյ աղքատն ատելի եղիցի ։ ) բարեկամք ատեսցեն զբարեկամն աղքատ ։ բարեկամք մեծատանց բազումք ։ 21 * Որ անարգէ զաղքատն՝ մեղանչէ ։ և որ ողորմի աղքատաց, երանելի է ։ ( որ հաւատայ 'ի Տր՝ զողորմութի սիրէ ։ ) 22 * Մոլորեալք նիւթեն զչարիս ։ զողորմութի և զճշմարտութի նիւթեն բարիք ։ ( ոչ գիտեն զողորմութի և զհաւատ նիւթօղք չարեաց ։ ողորմութի և հաւատք առ նիւթօղս բարեաց ։ ) 23 * Ամենայնի որ հոգայ, մի ինչ է աւելի՝ իմաստութի ։ իսկ անձնդիւրն՝ և անհոգն՝ 'ի կարօտութե եղիցի ։ 24 * Պսակ իմաստնոց խորագիտութի ։ և գնացք անմտաց՝ չարութի ։
25 * Փրկէ 'ի չարէ զանձն՝ վկայ հաւատարիմ ։ և բորբոքէ ստութբ նենգաւորն ։ 26 * Յերկիւղ Տն յոյս զօրութե ։ և որդւոց իւրոց թողու զհաստատութի խաղաղութեան ։ 27 * Երկիւղ Տն աղբիւր կենաց . և առնէ խոտորիլ յորոգայթից մահու ։ 28 * Ի բազում զօրս փառք թագաւորի ։ 'ի նուազիլ ժողովրդոց՝ բեկումն հզօրաց ։ 29 * Այր երկայնամիտ՝ բազմապատիկ է խորհրդով ։ իսկ կարճամիտն յոյժ անմիտ է ։
30 * Այր հեզ և երկայնամիտ՝ բժիշկ է սրտի ։ ցեց ոսկերաց սիրտ հոգած ։
31 * ‖Որ զրպարտէ զտնանկն, բարկացուցանէ զարարիչն նորա ։ և որ պատուէ զնա՝ ողորմի աղքատին ։ 32 * Չարեօք իւրովք մերժի ամպարիշտն ։ և որ յուսայ յանձին սրբութիւն՝ արդար է ։
33 * Ի սիրտ բարի հանդչի իմաստութի . և 34 'ի սիրտ անմտաց ոչ ճանաչի ։ * Արդարութի զազգս բարձրացուցանէ . նուազեցուցանեն զազգս մեղք ։
35 * Ընդունելի է թագաւորի պաշտաւոր իմաստուն ։ և իւրով շուտափութբ

'ի բաց

'ի բաց բառնայ զանարգութիւն : բարկութիւն կորուսանէ զիմաստունս :

## ԳԼ: ԺԵ:

1 Պատասխանի ողոք՝ դարձուցանէ զսրտմտութիւն : բան խիստ , յարուցանէ զբարկութիւն: * 2 Լեզու իմաստնոց գիտէն զբարիս . բերանք անզգամաց պատմեն զչարիս : * 3 Յամենայն տեղիս աչք Տն դիտեն զբարիս և զչարս : * 4 Բժշկութիւն լեզուի՝ ծառ կենաց : և որ պահէ զնա՝ լցցի հոգւով: * 5 Անզգամն անգոսնէ զխրատ հօր . իսկ որ պահէ զյանդիմանութիւն խորագէտ է : 'ի յաճախել արդարութեան՝ զօրութիւն բազում: և ամբարիշտք արմատաքի յերկրէ կորիցեն : * 6 Տունք արդարոց զօրութիւն բազում : պտուղք ամբարշտաց կորիցեն : * 7 Շրթունք իմաստնոց հաստատեալք են՝ իմաստութեամբ : սիրտք անմտաց ոչ են անսղալք : * 8 ||Պատարագք ամբարշտաց՝ պիղծք են առաջի Տն : ուխտք ուղղոց ընդունելիք են նմա : * 9 Պիղծք են առաջի Տն ճանապարհք ամբարշտաց : իսկ որ երթայ զհետ արդարութեան՝ սիրէ զնա: * 10 Խրատ անմեղին՝ ճանաչի 'ի մերձաւորաց: իսկ որք ատեն զյանդիմանութիւն՝ վախճանեսցին անարգութեամբ : * 11 Դժոխք՝ և կորուստ յայտնի են առաջի Տն : զիարդ և ոչ սիրտ մարդկան: * 12 Ոչ սիրէ անխրատն զյանդիմանիչս իւր : և ընդ իմաստունս ոչ խօսեսցի : * 13 ||Սրտի բերկրեցելոյ երեսք ծիծաղեսցին : և ոգի՝ որ 'ի տրտմութեան իցէ՝ թաղծեալ շրջի : * 14 Սիրտ ուղիղ՝ խնդրէ զիմաստութիւն . և բերան անխրատից՝ տեղեկանայ չարեաց: * 15 Յամենայն ժամանակս աչք չարաց ապասեն չարեաց : իսկ բարիքն հանդարտին յամենայն ժամ: * 16 Լաւ է փոքր բաժին երկիւղիւ Տն՝ քան զգանձս մեծամեծս աներկիւղածութեամբ : * 17 Լաւ են կոչմունք բանջարեղէնք սիրով՝ և շնորհիւ՝ քան զզուարակ 'ի մսուր թշնամութեամբ: * 18 Այր բարկացօղ՝ նիւթէ զկռիւս . իսկ երկայնամիտն և զհանդերձեալսն ցածուցանէ : ( այր երկայնամիտ շիջուցանէ զդատաստան՝ իսկ ամբարիշտն առաւել ևս գրգռէ :) * 19 Ճանապարհք վատաց կցեալ փշօք : բայց ժրացն վարուք են : * 20 Որդի իմաստուն՝ ուրախ առնէ զհայր : որդի անմիտ՝ արհամարհէ զմայր իւր : * 21 Սիրտ անմտի կարօտ է հանճարոյ : այր իմաստուն ուղորդ գնայ : * 22 Յապաղեն զխորհուրդս՝ որք ոչ պատուեն զխորհրդակիցս : 'ի սիրտ խորհրդականաց հաստատի խորհուրդ : * 23 Նա ոչ հնազանդի նմա անըզ_



գամն : և ոչ ասասցէ դիպօղ ինչ . և բարի հասարակաց : * 24 Ճանապարհ կենաց խորհուրդ իմաստնոց : զի խորշեալն 'ի դժոխոց՝ փրկեսցի: * 25 Զտունս թշնամանողաց կործանէ Տր : և հաստատէ զսահմանս այրեաց և որբոց : * 26 Պիղծ է առաջի Տն խորհուրդ անիրաւ : բանք սրբոց պարկեշտք են: * 27 Սատակէ զանձն իւր կաշառառուն : իսկ որ ատէ զկաշառս , կեցցէ : ||Ողորմութեամբ և հաւատով սրբին մեղք : և երկիւղիւ Տն խորշի ամենայն ոք 'ի չարէ : * 28 Սիրտք արդարոց խորհին զհաւատս : բերանք ամբարշտաց պատասխանի տան զչարիս: ընդունելիք են առաջի Տն ճանապարհք մարդկանց արդարոց : վասն նոցա՝ և թշնամիք բարեկամք լինին : * 29 Հեռի է Ած յամբարշտաց : և աղօթից արդարոց լսէ: * Լաւ է սակաւիկ ինչ առնուլ արդարութեամբ : քան զբազում արդիւնս աներկիւղածութեամբ : սիրտ առն խորհեսցի զիմաստութիւն . զի յԱյ ուղղեսցին գնացք նորա : * 30 Ակն որ տեսանէ զբարիս՝ ուրախ առնէ զսիրտ համբաւ բարի պարարէ զոսկերս : * 31 Ունկն , որ լսէ զկշտամբանս կենաց՝ 'ի մէջ իմաստնոց յարամնասցէ : * 32 Որ մերժէ զխրատ, ատեայ զանձն . իսկ որ պահէ զյանդիմանութիւն, ստանայ զհանճար: * 33 Երկիւղ Տն խրատ է, և իմաստութիւն . և սկիզբն փառաց պատասխանի արասցէ նմա : առաջի երթան խոնարհաց փառք :

## ԳԼ: ԺԶ:

1 Մարդոյ իրս ինչ դնել 'ի միտ : և 'ի Տէ լինի պատասխանի լեզուի : 2 * Ամենայն գործք խոնարհի յայտնի են առաջի Տն : և հաստատէ զոգիս Տր: 3 * Մերձեա առ Տր զգործս քո . և հաստատեսցին խորհուրդք քո : ( որչափ 'ի մեծութիւն հասանիցես . 'ի խոնարհութեան կալ զանձն քո : և առաջի Տն գտցես շնորհս :) 4 * Զամենայն ինչ գործեաց Տր վասն իւր : իսկ ամպարիշտք յաւուր չարի կորիցեն : 5 * Պիղծ է առաջի Այ ամ մեծամիտ : որ ձեռնամուխ լինի 'ի տարապարտուց՝ ոչ արդարասցի : սկիզբն ճանապարհի բարւոյ՝ առնել զարդարութիւն : և ընդունելիք են աղօթք քան զպատարագս մատուցանել: 6 * Որ խնդրէ զՏր , գտցէ զգիտութիւն արդարութեան հանդերձ : և որք ուղղութեամբ խնդրեն զնա , գտցեն զխաղաղութիւն : 7 * Զի ամենայն գործք Այ արդարութեամբ են : ամբարիշտն պահի յաւուր չարի : 8 * Լաւ է սակաւ ինչ առնուլ երկիւղիւ Տն՝ քան զգանձս մեծամեծս ամբարշտութեամբ . 9 * Սիրտ առն խորհեսցի զի_

Margin notes: 25.15. — 34.21. — 17.22. — 16.6. — 15.27. — *||6 Ողորմութեամբ և ճշմարտութեամբ քաւին մեղք . և երկիւղիւ Տն խոտորի 'ի չարէ :

բաւունս ։ զի յՏ.Ծ ուղղեսցին գնացք նորա ։ 10 *Մարգարէութիւն է 'ի շրթունս թագաւորի․ և 'ի դատաստանի մի՛ մոլորեսցի բերան նր ։ 11 * Մէտ կշռոց է արդարութիւն 'ի Տ՟է ։ և գործք նորա կշիռք արդարք ։ 12 * Գարշելի է թագաւորի՝ որ առնէ զչարիս ։ զի արդարութեամբ հաստատի աթոռ իշխանութեան նորա ։ 13 * Ընդունելիք են թագաւորի շրթունք արդարք․ և զբանս ուղիղս սիրէ Տ՟ր ։ 14 * Սրտմտութիւն թագաւորի հրեշտակ մահու ։ և այր իմաստուն ցածուսցանէ զնա ։ 15 *'Ի լոյս կենաց որդի թագաւորի ։ և ընդունելիք նր իբրև զամպ անագան ։ 16 *Դադարք իմաստութե ընտիր քան զոսկի ։ դադարք հանճարոյ՝ ցանկալիք են քան զարծաթ ։ 17 *Շաւիղք կենաց խոտորին 'ի չարաց ։ և երկայնութիւն կենաց են ճանապարհք արդարութեան ։ ( որ ընդունի զխրատ՝ 'ի բարիս եղիցի ։ և որ պահէ զյանդիմանութիւն՝ իմաստնասցի ։ որ զգուշանայ ճանապարհաց իւրոց՝ պահէ զանձն իւր ։ և որ սիրէ զկեանս, խնայէ 'ի բերան իւր ։ ) 18 *Նախ քան զբեկումն յառաջեն թշնամանք ։ և յառաջ քան զգլորումն՝ չարաբարոյութիւն ։ 19 *Լաւ է հանդարտամիտն խոնարհութբ ։ քան զայն, որ բաժանէ զաւար ընդ թշնամանօղս ։ 20 *Իմաստունն գիտակ յիրս բարեաց է․ և որ յուսայ 'ի Տ՟ր՝ երանելի է ։ 21 * Զիմաստունս՝ և զհանճարեղս անմիտս կոչեն ։ և որք քաղցր են բանիւք․ աւելի ևս լուիցեն ։ 22 *Աղբիւր կենաց են միտք որոց ունին զնա․ խրատ անմտաց չար է ։ 23 *Սիրտ իմաստնոց իմանայ՝ որ ինչ յիւրմէ բերանոյ է ։ և 'ի շրթունս իւր կրէ զիրաւագիտութիւն ։ 24 *Խորիսխք մեղու են բանք բարիք․ և քաղցրութիւն նոցա բժշկութիւն է հոգւոյ ։ 25 *Են ճանապարհք՝ որք թուին մարդկան՝ թէ ուղիղք իցեն ։ և կատարած նոցա հայի յատակս դժոխոց ։ 26 *Այր 'ի վաստակս ջանայ անձին իւրում ։ և բռնադատէ իւր զկորուստ ։ իսկ թիւրն 'ի բերան իւր կրէ զատակումն ։ 27 *Այր անզգամ փորէ անձին իւրում զչարիս ։ և 'ի վ՟ր շրթանց իւրոց գանձէ զհուր ։ 28 *Այր խորամանկ նիւթէ զչարիս ։ և լապտեր նենգութեան բորբոքէ զչարութիւն ։ և քակէ զբարեկամս ։ 29 *Այր անօրէն փորձ առնէ զբարեկամս ։ և տանի զնոսա 'ի ճանապարհս անբարիս ։ 30 *Որ հաստատէ զաչս իւր․ և խորհի զկամակորս․ և սահմանէ շրթամբք իւրովք զամենայն չարիս․ այնպիսին է հնոց չարեաց ։ 31 * Պսակ պարծանաց ծերութիւն ։ և 'ի ճանապարհս արդարութեան գտանի ։

32 *Լաւ է այր երկայնամիտ քան զհզօր ։ և այր որ ունի զիմաստութիւն քան զանդս մեծամեծս ։ և որ յաղթէ բարկութեան․ լաւ է քան զայն․ որ առնու զքաղաքս հզօրս ։ 33 * Ընդրէն 'ի ծոց իւրեանց դառնայ ամենայն ինչ անիրաւաց ։ այլ 'ի Տ՟է ամենեցուն իրաւունք են ։

## ԳԼ ։ ԺԷ ։

1 Լաւ է պատառ մի հեշտութեամբ և խաղաղութեամբ՝ քան զտունս լի բազում բարեօք հանդերձ թշնամութեամբ ։ 2 * Ծառայք իմաստունք տիրեսցեն տերանց անմտաց ։ և ընդ եղբարս բաժանեսցեն զմասն ։ 3 * Որպէս փորձի 'ի բովս արծաթ և ոսկի ։ նոյնպէս ընտրէ զսիրտս Ա՟Ծ ։ 4 * Չարն հնազանդի լեզուի անիրաւաց ։ բայց արդարն ոչ հայի 'ի շրթունս սուտս ։ Հաւատացելոյն ամ՟ աշխարհ ընչիւք լի է ։ անհաւատին և ոչ դանկ մի ։ 5 * Որ ծաղր առնէ զաղքատն, բարկացուցանէ զարարիչն նր ։ և որ ոտն հարկանէ կորուսելոյն՝ ոչ արդարասցի ։ իսկ որ գթայն, զողորմութիւն գտցէ ։ 6 * Պսակ ծերոց որդիք որդւոց՝ և պարծանք որդւոց հարք իւրեանց ։ 7 *Ոչ յարմարին անզգամաց շրթունք հաւատարիմք ։ և ոչ արդարոց շրթունք սուտք ։ 8 * Վարձք շնորհաց՝ խրատ՝ որոց վարին նովաւ ։ զի ուր և դառնայցէ՝ յաջողեսցի ։ 9 *Որ ծածկէ զյանցանս՝ խնդրէ զբարեկամութիւն ։ իսկ որ ատեայ զծածկելն․ քակէ զբարեկամս և զընտանիս ։ 10 *Փշրեն զսիրտս իմաստնոց սպառնալիք ։ իսկ անմիտն պատժեալ ոչ զգայ ։ 11 * Զհակառակութիւս յարուցանէ ամ՟ չարակամ ։ բայց Տ՟ր զհրեշտակ անողորմ առաքէ 'ի վերայ նր ։ 12 * Անկցի հոգ 'ի սիրտ առն իմաստնոյ ։ և անմիտք խորհին զչարիս ։ 13 * Որ հատուցանէ զչար փոխանակ բարւոյ, չար 'ի տանէ նորա մի՛ պակասեսցի ։ 14 * Իշխանութիւն բանից՝ տայ սկիզբն արդարութեան ։ և առաջնորդ լինի կարօտութեան հակառակութիւն և կռիւ ։ 15 *Որ արդար համարի զանիրաւն․ և անիրաւ զարդարն․ պիղծք են՝ և գարշելիք երկոքեան առաջի Տ՟ն ։ 16 *Ընդէ՞ր ընաւ գտանին ստացուածք անմտին ։ զի ստանալ զիմաստութիւն միտս ոչ կարէ ։ որ բարձր առնէ զտուն իւր՝ խնդրէ զբեկումն ։ և որ կամակոր է յուսմանէ, անկցի 'ի չարիս ։ 17 * Յամենայն ժամանակի բարեկամք եղիցին քո․ բայց եղբարք 'ի վիշտս եղիցին քեզ պիտոյ ։ զի վասն այնորիկ իսկ ծնան ։ 18 *Այր անմիտ կայթէ՝ և խնդայ՝ յորժամ երաշխաւոր

լինի

Սիրաք 10.28 · 14.31 · 11.17 · 1. Պետր 3.9 · 1. Թեսաղ 5.15 · Եսայ 5.20

լինի բարեկամաց իւրոց ։ 19 *Այր փառասէր խնդայ ընդ կռիւ ։ որ բարձրացուցանէ զդուռն իւր՝ խնդրէ զբեկումն ։ 20 *Այր խստասիրտն՝ բարեաց ոչ պատահի ։ այր յեղյեղուկ լեզուաւ՝ անկցի 'ի չարիս ։ 21 *Սիրտ անզգամի 'ի ցաւս կրեսցէ իւրոց։ ոչ ուրախ լինի հայր 'ի վ՛ր որդւոյ անխրատի ։ որդի իմաստուն՝ ուրախ առնէ զմայր իւր ։ 22 *‖Սիրտ բերկրեալ բարեմոյնս առնէ։ առն հոգածի, ցամաքին ոսկերք։ 23 *Որ առնու զկաշառ 'ի գոգ իւր 'ի տարապարտուց՝ ոչ յաջողին ճանապարհք նորա ։ ամպարիշտն խոտորի 'ի ճանապարհէ արդարութեան ։ 24 *‖Երեսք առն հանճարեղի իմաստունք ։ աչք անմտի զվայրօք յածին ։ 25 *Բարկութիւն հօր, որդի անզգամ։ և ցաւք են ծնողի իւրոյ։ 26 *Տուժել զայր արդար՝ չէ բարւոք։ և ոչ զարդարն նենգել հզօրաց 'ի վ՛ր իրաւանց ։ 27 *‖Որ խնայէ զբան խիստ հանել՝ իմաստուն է ։ այր երկայնամիտ հանճարեղ է ։ 28 *Յանմիտն հարցին՝ թէ իմաստութիւն և հանճար համարեալ ինչ իցէն. պապանձեցաւ. և համարեցաւ թէ իմաստուն իցէ ։

(Margin: ‖Սեր. 15. 13. — ‖Ժողով. 2. 14. և 8. 1. — ‖Յակոբ. 1. 19.)

## ԳԼ: ԺԸ.

1 Պատճառս գնէ այր՝ յորժամ կամի քակել 'ի բարեկամաց ։ յամենայն ժամ՝ նախատ եղիցի ։ 2 *Աչինչ պիտոյ է իմաստութիւն պակասամտին ։ զի առաւել ևս վարի անզգամութբ ։ 3 *Ամ՛ն մտան հասեալ 'ի խորս չարեաց՝ արհամարհէ ։ բայց գան 'ի վ՛րայ նր անարգութիւն և թշնամանք ։ 4 *Ջուր խորէ խորհուրդ սրտի առն ։ գետ բղխեալ և աղբիւր կենաց ։ 5 *Ակն առնուլ ամբարշտի չէ բարւոք ։ և ոչ թիւրել զիրաւունս արդարոյ 'ի դատաստանի ։ 6 *Շրթունք անզգամի հասուցանեն զնա 'ի չարիս ։ և բերան նր յանդուգն՝ զմահ կոչէ 'ի վ՛ր ։ 7 *Բերան անզգամին բեկումն նմա ։ և շրթունք նր որոգայթ է անձին իւրում ։ 8 *Օլատ կործանէ երկիւղ ։ և անձինք կանացեաց քաղցին ։ 9 *Որ ոչ բժշկէ զանձն իւր 'ի գործս իւր, եղբայր է այնորիկ. որ ժանտացուցանէ զանձն իւր։ 10 *'Ի մեծութենէ զօրութեանց յայտնի է անուն Տն. և առ նա ընթացեալ արդարք 'ի բարձրանան։ 11 *Ստացուածք առն մեծատան քաղաք ամուր ։ և փառք նորա մեծապէս հովանի ունի ։ 12 *Յառաջ քան զբեկումն իւր՝ բարձրանայ սիրտ առն ։ և նախ քան զկործիս իւր կորանայ ։ 13 *‖Որ տայ զբան պատասխանի յառաջ քան զլսել ինչ. անզգամութիւն է

(Margin: 8. Բան երկեղածի [illegible] եբր. զբանս [illegible] . և [illegible] գոյնս որպ. վայրենի ։ — ‖Սիրաք. 11. 8.)

նմա և նախատինք ։ 14 *Օսրտմութիւն առն ցածուցանէ ծառայ՝ իմաստուն ։ բայց առն նեղասրտի ո՞վ համբերեսցէ ։ 15 *Սիրտ իմաստնոյ ստանայ զհանճար ։ և ականջք իմաստնոց խնդրեն զխորհուրդս ։ 16 *Տուրք մարդոյ ընդարձակեցուցանեն զնա՝ և ընդ իշխանս նստուցանեն զնա ։ 17 *Արդարն անձին իւրում չարախօսէ՝ 'ի սկզբան բանից իւրոց։ զի յորժամ սկսանիցի ոսոխն, յանդիմանի ։ 18 *Զհակառակութիւնս դադարեցուցանէ լուռ լուռն. և 'ի մէջ 19 բռնաւորաց ընտրէ զիրս ։ *Եղբայր յեղբօրէ օգնեալ՝ իբրև զքաղաք ամուր ։ և հզօր է իբրև զհաստատեալ 20 թագաւորութիւն ։ *'Ի պտղոյ բերանոյ այր յագեցուցանէ զորովայն իւր։ և 'ի 21 պտղոյ շրթանց իւրոց լցցի ։ *Մահ և կեանք 'ի ձեռն լեզուի ։ և որ յաղթէ 22 նմա կերիցէ զպտուղ նր ։ *Որ եգիտ զկին բարի՝ եգիտ շնորհս ։ և ընկալաւ յԱծ զուրախութիւն ։ որ հանէ զկին բարի՝ հանէ զբարիս ։ և որ ունի զկին 23 շուն, անմիտ է՝ և ամբարիշտ ։ *Յոլովք բանի և եթ կայ տնանկն ։ և մեծատունն յանդուգն տայ զպատասխանի ։ 24 *Այր 'ի բաղանեաց լկտութբ գնայ։ լաւ է բարեկամ մերձաւոր՝ քան եղբայր ։

(Margin: այր սիրե լի առ 'ի ընկերութե. առաւել է քան եղբայր ։)

## ԳԼ: ԺԹ.

1 Լաւ է տգիտն՝ որ գնայ միամտութբ իւրով. քան անզգամն որ շաղաւա 2 շուրթն իցէ ։ *Սակայն տգիտութիւն անձին իւրում չէ բարի. և 'ի տագնապել 3 ոտից իւրոց մեղանչէ ։ *Անզգամութի առն ապականէ զճանապարհս նր ։ և զԱծ պատճառս դնէ 'ի սրտի իւրում ։ 4 *Մեծութիւն յաւելու բարեկամս բազումս ։ իսկ աղքատն՝ և 'ի բուն բարեկամէն 5 քակի ։ *‖Վկայ սուտ՝ առանց պատժոց ոչ եղիցի ։ և որ բամբասէ 6 անիրաւութբ՝ ոչ զերծցի ։ *Բազումք ողոքեն զերեսս թագաւորաց ։ և ամ՛ չարակամ նախատ լինի մարդկան ։ 7 *Ամ՛ որ ատեայ զեղբայր աղքատ, հեռի լինի և 'ի սիրոյն ։ հանճար բարի մերձենայ յայնոսիկ, որք գիտեն զնա ։ և այր իմաստուն գտցէ զնա ։ որ բազում չարիս առնէ՝ կատարէ զչարութի ։ և որ գրգռէ զբանս՝ ոչ ապրեսցի։ (մանաւանդ՝ որ վարէ զբանս. որք ոչ 8 իւր իցեն ։) *Որ ստանայ զհանճար՝ սիրէ զանձն իւր ։ և որ պահէ զիմաստութի, պահէ զբարիս ։ 9 *Վկայ սուտ առանց պատժի ոչ լիցի ։ և որ բորբոքէ զչարութի՝ կորիցէ 'ի նմանէ ։ 10 *Ոչ վայելէ անզգամի փափկութի ։ և եթէ ծառայ սկսանիցի հպարտութբ

(Margin: աւել է արեկամ եղեցի. քան եղբայր ։ — ‖Դանիէ. 3. 61.)

բռնանալ։ [11] *Այր ողորմած՝ երկայնամիտ լինի։ և պարծանք նր̃ գեր ՚ի վերայ անօրինաց։ [12] *Սպառնալիք թագաւորի նման են մռնչելոյ առիւծու։ զուարթութի̃ նորա իբրև զցօղ ՚ի վերայ դալարւոյ։ [13] *Ամօթ հօր՝ որդի անմիտ. և ոչ են սուրբ ուխտք ՚ի վարձուց վարձկանաց։ [14] *Օտունս և զստացուածս բաժանեն հարք որդւոց։ և ՚ի Տէ̃ պատշաճի կին առն։ [15] *Ստութի̃ ունի զկանացին՝ և անձն գործատեաց քաղցեսցի։ [16] *Որ պահէ զպատուիրանս՝ պահէ զանձն իւր։ և որ արհամարհէ զճանապարհս իւր՝ կորիցէ։ [17] *Փոխ տայ Այ̃, որ ողորմի տնանկին։ ըստ տրոց նորա հատուսցէ նմա։ [18] *Խրատեա՛ զորդի քո՝ զի այնպէս եղիցի քեզ յոյս բարի։ և ՚ի թշնամանս նր̃ մի՛ հպարտանար անձամբ քով։ (զի եթէ հարկանես զնա գաւազանաւ՝ ոչ մեռանի. բայց զանձն նր̃ փրկես ՚ի մահուանէ։) [19] *Այր չարաբարոյ բազում տուժեսցի։ և եթէ եւս ժանտանայցէ՝ և զանձն եւս դիցէ ՚ի վերայ։ [20] *Լուր որդեակ խրատու հօր քոյ։ և ընկա՛լ զմակացութի̃. զի իմաստուն եղիցիս ՚ի վախճանի քում։ [21] *Բազում խորհուրդք են ՚ի սրտի առն։ բայց խորհուրդ Այ̃ մնայ յաւիտեան։ [22] *Պտուղ առն ողորմութի̃ իւր։ լաւ է աղքատ արդար. քան մեծատուն սուտ։ [23] *Երկիւղ Տն̃ ՚ի կենդանութի̃ առն. իսկ աներկիւղն մոլորեալ ՚ի դրունս՝ բնակեսցի ՚ի տեղիս ուր ոչ լինիցի այցելութի̃ յաւիտենից։ [24] *‖Որ թաքուցանիցէ զձեռս ՚ի ծոց իւր տարապարտուց։ և ոչ ՚ի բերան իւր տարցի զնա։ [25] *‖Ի չարչարել անզգամին՝ խորագիտագոյն եւս լինի անմիտն։ ապա թէ յանդիմանես զայր իմաստուն՝ ՚ի միտ առցէ զհանճար։ [26] *Որդի՝ որ անարգէ զհայր. և կամ ՚ի բացմերժէ զմայր իւր, ամօթ կրեսցէ. և նախատ լիցի։ [27] *Որդի՝ որ թողուցու պահել զխրատ հօր, խորհի զճառս չարեաց։ [28] *Որ յերաշխի առնու զմանուկ անմիտ, թշնամանս առնէ իրաւանց։ բերան ամբարշտաց կլանէ զդատաստանս։ [29] *Պատրաստին անխրատից տանջանք։ նոյնպէս և պատիժք անզգամաց։

## Գ Լ : Ի:

[1] Անառակ է գինի. և թշնամանօք արբեցութի̃։ և ամ̃ որ հաղորդի նոցա, չէ̃ իմաստուն։ [2] *Ոչինչ է պակաս սպառնալեաց թագաւորի ՚ի սրտմտութէ̃ առիւծու։ և որ բարկացուցանէ զնա՝ վնաս առնէ անձին իւրում. [3] *Փառք են առն՝ խոտորել ՚ի հայհոյութեց։ իսկ ամենայն անզգամ ընդ այն պիտին շաղախի։ [4] *Ծուլեպէտ նախատի վասն՝ ոչ ամաչէ. նոյնպէս և որ առնու զցորեան փոխ յամարայնի։ [5] *Ջուր խորին է խորհուրդ սրտի առն։ և այր իմաստուն քամեսցէ զնա։ [6] *Մեծ է մարդ՝ և պատուական այր ողորմած։ բայց զայր հաւատարիմ գործ է գտանել։ [7] *Որ շրջի անարատ յարդարութեն, երանելիս թողցէ զորդիս իւր։ [8] *Յորժամ թագաւոր արդար նստցի յաթոռ. ոչ կայ առաջի աչաց նորա ամենայն չարագործ։ [9] *‖Ո՞վ ոք պարծեսցի զսիրտ սուրբ ունիլ։ կամ ո՞վ ոք համարձակիցի՝ թէ սուրբ իցէ ՚ի մեղաց։ [10] *‖Կշիռ մեծ և փոքր. և չափ կրկին, պիղծք են առաջի Տն̃ երկոքեան։ (խափանեսցին նք̃. և որք առնեն զնս̃. նա և ՚ի գնացս իւր խափանեսցի այր։) [11] *Երիտասարդ որ ՚ի սրբութեն է, ուղիղ են ճանապարհք իւր։ [12] *Ունկն լսէ՝ և ակն տեսանէ։ Տն̃ գործածք են երկոքեանն։ [13] *Մի՛ սիրեր զչարախօսել. զի մի՛ մեռցիս։ բա՛ց զաչս քո. և յագեա՛ց հացի։ [14] *Օչարն ասեցեալ՝ չա՛ր աւէ՝ որոյ զնո՞յն ստացեալ իցէ։ և մատուցեալ յառաջ ապա նովիմբ պարծեսցի։ [15] *Է ոսկի և բազմութի̃ անդաստանաց։ և անօթ պատուական՝ շրթունք գիտութեն։ [16] *‖Օ՛րձ զհանդերձ նորա, զի երաշխաւոր եղև օտարի։ և ՚ի հիւրութեն գրաւէ զնա։ [17] *Քաղցրացաւ առն հաց ստութեն։ և լցցի բերան նր̃ կոպճով։ [18] *Խորհուրդք մօք պատրաստեսցին։ և պատերազմ իմաստութեբ̃ մղեսցի։ [19] *‖Որ յայտնէ զխորհուրդս՝ գնայ նենգութբ̃։ և ընդ պատրողին շրթամբք իւրովք՝ մի՛ խառնակեսցիս։ [20] *‖Որ հայհոյէ զհայր կամ զմայր, շիջցի լոյս նորա։ և բիբք աչաց նորա խաւարեսցին։ [21] *Մասն փութացեալ յառաջնումն՝ ՚ի վախճանի ոչ օրհնեսցի։ [22] *‖Մի՛ ասիցես թէ առից ըզվրէժ ՚ի թշնամւոյն։ այլ համբեր Տն̃. զի քեզ օգնական լիցի։ [23] *‖Պիղծ է առաջի Տն̃ չափ կրկին։ և կշիռք նենգութեն ոչ են բարւոք առաջի նորա։ [24] *Ի Տէ̃ ուղղին գնացք առն. և մահկանացուն զիա՞րդ խելամուտ լիցի ճանապարհաց իւրոց։ [25] *Որոգայթ է առն վաղվաղել և յիւրոց ընչից նուիրել։ քանզի յետ ուխտելոյն զղջումն լինի։ [26] *Ցրուէ ամբարշտաց՝ թագաւոր իմաստուն։ և արկանէ ՚ի վր̃ նց̃ անիւ։ [27] *Լոյս Տն̃ շունչ մարդկան, որ քննէ զշտեմարանս սրտի։ [28] *‖Ողորմութի̃ և ճշմարտութի̃ պահապան թագաւորի։ և

և պատեսցեն արդարութ՟ք զաթո_ ռն ։ *Զարդ երիտասարդաց իմաստու 29 թի․ և փառք ծերոց ալիք ։ *Վէրք և 30 հարուածք պատահին չարաց ։ և տան ջանք ՚ի շտեմարանս որովայնի ։

## ԳԼ․ ԻԱ․

Որպէս սահանք ջրոյ․ նոյնպէս սիրտ 1 թագաւորի ՚ի ձեռս Ա՟Յ ։ ընդ որ կոյս կամի հայեցուցանել՝ դարձուցա_ նէ զնա ։ *Ամենայն այր երևի անձին 2 իւրում արդար ։ բայց ուղղէ զսիրտս Տ՟ր ։ *Գործել զարդարութի և խօ_ 3 սիլ զճշմարտութիւն հաճոյ է առաջի Տ՟ն առաւել քան զարիւն զոհից ։ *Մեծամիտ է ՚ի թշնամանս այր խըս 4 տասիրտ ։ ճրագ ամբարշտաց մեղք ։ *Խորհուրդ համառօտ՝ սակայն յար 5 դարութի ։ և ամ՝ վաղվաղուկ՝ սա_ կայն ՚ի նուազութիւն ։ *Որ ժողովէ 6 զգանձս ստութ՟բ լեզուի՝ զհետ երթայ սնոտեաց ։ և անկանի յորոգայթս մա_ հու ։ *Սատակումն ամբարշտաց հաս 7 ցէ ։ վասն զի ոչ կամին առնել զարդա րութի ։ *Առ խոտորեալսն՝ խոտորէ 8 ճանապարհս առաքէ Ա՟Ծ ։ քանզի սուրբ և ուղիղ են գործք նր ։ *Լաւ է բնա_ 9 կել առ անկեան ՚ի ներքոյ ծղոյ․ քան ՚ի բռնեալս՝ անիրաւութ՟ք․ և ՚ի տան խառնակութե ։ *Անձն ամբարշտի 10 ցանկանայ չարեաց ։ և ոչ գտցէ յումե քէ զողորմութի ։ *‖Տուժել անխը_ 11 րատի, խորագիտագոյն ևս լիցի ան_ մեղն․ և իմաստութ՟ք հանճարեղն ըն_ դունի զգիտութիւն ։ *Իմիտ առնու 12 արդարն զսիրտ ամբարշտաց ։ և արա_ կանէ ամբարիշտս չարեօք ։ *Որ խնու 13 զլսելիս իւր, զի մի լուիցէ տկարին․ և նա կարդասցէ առ Տէր, և ոչ լուիցէ նմա ։ *Տուրք գաղտնիք դարձուցանեն 14 զբարկութի ։ իսկ որ խնայէ ՚ի տուրս, զսաստիկ բարկութի յարուցանէ ։ *Ուրախութի արդարոյ է առնել զի_ 15 րաւունս ։ և սուրբ պիղծ թուի չարա_ գործաց ։ *Այր մոլորեալ ՚ի ճանա_ 16 պարհէ արդարութե՝ ՚ի ժողովս հս_ կայից դադարեսցէ ։ *Այր կարօտեալ 17 սիրէ զուրախութի ։ և որ սիրէ զգինի և զձէթ ՚ի մեծութե ։ *Գնջան լինի 18 արդարոյն անօրէնն ։ և ուղղոց՝ որք ան ցանեն զաւխոտին ։ *‖Լաւ է բնակել 19 յանապատի՝ քան ընդ կնոջ անզգա_ մի լեզուանւոյ՝ և բարկացողի ։ *Գանձ ցանկալի հանգիցէ ՚ի սիրտ 20 իմաստնոյ ։ և արք անզգամք կլցեն զնա ։ *Ճանապարհ արդարութե և ողոր_ 21 մածութե գտցէ զկեանս․ և զողոր_ մութի և զփառս ։ *Ի վերայ ամուր 22

‖Սիր․ 19․ 25․

‖Սիր․ 25․23․ Առ․ 25․24․

քաղաքաց էհաս իմաստունն ։ և քա_ կեաց զամրութին՝ յոր յուսացեալ էին 23 ամբարիշտք ։ *Որ պահէ զբերան իւր և զլեզու․ պահէ ՚ի նեղութե զանձն իւր ։ 24 *Խիստն՝ և յանդուգն՝ և հպարտն՝ ժանտ կոչի ։ և որ ոխակալ է՝ անօրէն 25 է ։ *Ցանկութիք սպանանեն զծոյլն ։ զի ոչ յօժարին ձեռք նորա գործել 26 ինչ ։ *Ամբարիշտն ցանկայ զամ օր ՚ի ցանկութիս չարեաց ։ իսկ արդարն ողորմի՝ և տայ առանց խնայելոյ ։ 27 *Պատարագք ամբարշտաց պղծք են առաջի Տ՟ն ։ քանզի անօրէնութ՟ք իսկ 28 մատուցանեն զնոսա ։ *Վկայ սուտ կորիցէ․ և այր հլու՝ զգուշութ՟ք խօ_ 29 սեսցի ։ *Այր ամպարիշտ յանդգնու_ թ՟ք հարկանի ՚ի դիմի ։ իսկ ուղիղն, ինքն իմանայ զճանապարհս իւր ։ 30 *Ոչ է մարդոյ իմաստութի և ոչ 31 խորհուրդ առ Ա՟Ծ ։ *Երիվար պատ_ րաստի յաւուր պատերազմի ։ բայց ՚ի Տ՟է է օգնականութի ։

ընդդէմ Ա՟Յ ։

## ԳԼ․ ԻԲ․

1 Լաւ է անուն բարի՝ քան զմեծութի բազում ։ և քան զարծաթ և զոսկի 2 շնորհք բարիք ։ *Մեծատունն և աղ քատն միմեանց պատահեցին ։ և եր_ կոցունցն այցելութի առնէ Տ՟ր ։ 3 *Խորագէտին տեսեալ զչարագործն պատժեալ՝ հաստատութ՟ք խրատէ զանձն ։ և անմիտք անցեալ առ նոքօք 4 վնասեցան ։ *Սկիզբն իմաստութե երկիւղ Տ՟ն ։ և մեծութի․ և փառք․ 5 և կեանք ։ *Տատասկ և որոգայթք՝ ՚ի ճանապարհս թիւրս ։ և որ պահէ զանձն իւր՝ հեռի լիցի ՚ի նոցանէ ։ 6 *Նորոգութի երիտասարդի ըստ ճա նապարհաց իւրոց ։ նաև յորժամ ծե րասցի, ոչ մերժեսցի ՚ի նոցանէ ։ 7 *Աղքատք տիրեսցեն ՚մեծատանց ։ և ծառայք տերանց իւրեանց փոխ տայ 8 ցեն ։ *Որ սերմանէ զանզգամութի՝ հնձեսցէ զչարիս ։ և զհարուածս գոր_ 9 ծոց իւրոց բովանդակեսցէ ։ *‖Զայր զուարթ և զառատ՝ սիրէ Ա՟Ծ ։ որ ողոր մի տնանկին՝ ինքն կերակրեսցի ։ քան_ զի յիւրմէ հացէ ետ աղքատին ։ Զյաղթութի և զպատիւ ստանայ, որ տայ զկաշառ ։ բայց սակայն զոգիս ա_ 10 ռողաց սպանանէ ։ *Հան զժանտն յատենէ՝ և ելցէ ընդ նմա հակառա_ կութի ։ զի յորժամ նստցի ընդ ատեա ռակիցսն, զամենեսեան անարգէ ։ 11 *Սիրէ Տ՟ր զսիրտ սբ․ և ընդունելիք են նմա ամ՝ անարատք ։ շրթամբք հով 12 ուէ թագաւոր ։ *Աչաւք Տ՟ն պահէ զհանճար ։ անդոսնէ զբանս անօրէնին ։ *Պատ_

‖Ժողով․ 7․ 2․

‖Սիր․ 31․28․

*Պատճառս դնէ վատ՝ և ասէ՝ առիւծ 13
ունի ի ճանապարհս. և զանցս հրապա-
րակաց սպանողք։ *Գուբ խորէ բե- 14
րան անօրինին. և ատեցեալն 'ի Տ̅է
անկցի 'ի նոյն։ (Են ճանապարհք չարք
առաջի առն. և ոչ սիրէ դառնալ 'ի
նոցանէ. բայց դառնալ պարտէ 'ի
թիւր և 'ի չար ճանապարհէ։)
*Անմտութիւն բորբոքեալ 'ի սրտի երի- 15
տասարդի. գաւազան և խրատ հեռի է
'ի նմանէ։ *Որ զրպարտէ զաղքատն. 16
բազում առնէ անձին իւրում չարիս.
և տայ մեծատան կարօտութեամբ։
*Բանից իմաստնոց մատո՛ զունկն քո. 17
և լո՛ւր զբանս իմ. և հաստատեա՛ զսիրտ
քո. *Զի ծանիցես զնո՝ թէ բարիք 18
են. և եթէ արկցես զնո 'ի սիրտ քո,
զո՛ւարճասցին միանգամայն 'ի շրթունս
քո։ *Զի եղիցի յոյս քո 'ի Տ̅ր. և ծա- 19
նուսցէ քեզ զճանապարհս իւր։ *Եւ 20
դու գրեսցես զնո երեքկին յանձին
քում. 'ի խորհուրդ. և 'ի գիտութի. և
'ի հանճար. յընդարձակութի սրտի
քոյ. *Ահա ուսուցանեմ քեզ զբանս 21
ճշմարիտ՝ և զգիտութի բարի լսել.
պատասխանի տալ քեզ զբանս ճշմար
տութե այնոցիկ, որք վիճին ը̅ քեզ.
*Մի հարստահարեր զտնանկն. վ̅զի 22
աղքատ է. և մի անարգեր զտկարն 'ի
դուրս. *Զի Տ̅ր դատէ զդատաստան 23
ն̅ր. և փրկեսցէ անկապուտ զանձն ն̅ր։
*Մի լինիր ընկեր առն բարկացողի. 24
և ընդ բարեկամի զայրացողի մի բնա
կիր. *Մի գուցէ ուսանիցիս զճանա 25
պարհս ն̅ր. և առնուցուս խեղդ ընդ
անձին քում. *Մի տար զանձն քո յե 26
րաշխաւորութի ակն առեալ երեսաց.
*Զի եթէ ոչ ունիցիս ուստի հատու 27
ցանիցես, առնուցուն զանկողինսն՝ որք
ընդ կողիւք քովք կայցեն. *Մի փո- 28
խեր զսահմանս յաւիտենականս, զորս
եդին հարքն քո. *Զայր շուտ և զգոյշ 29
'ի գործս իւր, թագաւորաց առաջի
պարտ է կայուցանել. և ոչ առաջի
արանց խօթասրտաց։

## ԳԼ: ԻԳ։

Յորժամ նստցիս յընթրիս ուտել 1
'ի սեղան հզօրաց. իմանալով իմա
ցի՛ր՝ որ ինչ առաջի դնիցի. և ապա մխե
ցի՛ր զձեռն քո. *Գիտասջի՛ր թէ այն 2
պիսի ինչ պարտէ և քեզ պատրաս-
տել. ապա թէ ագահագոյն իցես.
*Մի ցանկանայցես խորտկաց ն̅ր. վ̅զի 3
այնոքիկ կցեալք են 'ի կեանս ստու
թե. *Մի ձկտիր՝ թէ աղքատ իցես, 4
ընդ մեծատան. այլ քով իմաստութբ
հրաժարեա՛ 'ի նմանէ. *Զի եթէ 5

հաստատեսցես զակն քո 'ի վ̅ն ն̅ր, ո՛չ
ուրեք երևի. զի հանդերձեալ է ն̅ր իւր
թևս իբրև արծուոյ. և դառնայ 'ի
6 տուն վերակացուին իւրոյ. *Մի ու-
տեր ընդ հաց առն չարակնի. և մի
7 ցանկար կերակրոց ն̅ր. *Զի զոր օրի-
նակ եթէ ոք զմազ կլանիցէ՝ այնպէս
8 ուտէ և ըմպէ. *Մի մուծանիցես զնա
առ քեզ՝ և ուտիցես զհաց քո ը̅ նմա.
քանզի գարշեցուցանէ զնա. և ապա-
9 կանէ զբանս քո բարիս. *Յականջս
անզգամի ամենևին մի խօսիր. զի մի
երբէք անգոսնեսցէ զիմաստուն բանս
10 քո. *Մի փոխեր զսահմանս յաւիտե
նականս. և 'ի ստացուածս որբոց մի
11 մտանիցես. *Զի որ փրկէ զնոսա Տ̅ր՝
հզօր է. և դատէ զդատաստանս նոցա
12 ընդ քեզ. *Տո՛ւր 'ի խրատ զսիրտ քո. և
զլսելիս քո պատրաստեա՛ բանից իմաս
13 տութե. *Մի խնայեր խրատել զմ
տղայ. զի եթէ հարկանես զնա գաւա
14 զանաւ՝ ոչ մեռանի. *Քանզի դու
հարկանես զնա գաւազանաւ. բայց
զանձն նորա փրկես 'ի մահուանէ.
15 *Որդեակ՝ եթէ իմաստուն լինիցի
սիրտ քո, ուրախ արասցես և զիմ սիրտ.
16 *Եւ եթէ ընդելուզեսցես զշրթունս
քո ընդ շրթունս իմ, միայն թէ ու-
17 ղիղ իցեն. *Մի նախանձեսցի սիրտ
քո ընդ մեղաւորաց. այլ յերկիւղ Տ̅ն
18 կանխեսջի՛ր զօրհանապազ. *Զի եթէ
պահեսցես զնա, եղիցի քեզ զա՛ւակ.
19 և յոյս քո մի մերժեսցի. *Լո՛ւր որ-
դեակ՝ և լե՛ր իմաստուն. և ուղղեսցես
20 զխորհուրդս սրտի քոյ. *Մի լինիր
արբեցող. և մի ձկտիր ընդ հանդա-
21 նակօքս մսոյ վաճառաց. *Քանզի
ա̅մ արբեցող և բոզանոց աղքատաս-
ցի. և զգեցցի պատառատուն ամե-
22 նայն քնէած. *Լո՛ւր որդեակ հօր քոյ՝
որ ծնաւ զքեզ. և մի արհամարհեր
23 զծերութի մօր քոյ. *Զճշմարտու-
թի ստացի՛ր. և մի թողուր զիմաստու
24 թի՝ և զխրատ՝ և զհանճար. *Բարւոք
սնուցանէ հայր արդար. և 'ի վերայ
որդւոյ իմաստնոյ ուրախ լինի անձն
25 ն̅ր. *Ուրախ լիցին հայր և մայր քո 'ի
քեզ. և խնդասցէ՝ որ ծնաւն զքեզ.
26 *Տո՛ւր ցիս որդեակ զսիրտ քո. և աչք
քո ճանապարհաց իմոց պահեսցեն.
27 *Կարաս ծակ՝ է տուն օտար. և ջրհոր
28 նեղ օտարոտին. *Զի այնպիսին վաղ-
վաղակի սատակեսցի. և ա̅մ անօրէն
29 ապականեսցի. *Ո՞ւմ է վայ. ո՞ւմ խռո
վութիւնք. ո՞ւմ դատաստանք. ո՞ւմ
դժնդակութիւնք և վարանք. ո՞ւմ վէրք
տարապարտուց. ո՞յր են կապուտակ
30 ականողք. *Ո՛չ ապաքէն այնոցիկ՝
որք

որք յամենայն 'ի գինւոջ։ և ոյք գի-
տենն ուր գինեբմբուք լինիցին։ * Մի 31
արբենայք գինւով՝ այլ խօսեցարուք
ընդ մարդս արդարս։ և խօսեցարուք
ընդ միմեանս 'ի հրապարակս։ ( ապա
եթէ 'ի տաշտս և 'ի բաժակս արձակես
ցես զաչս քո, յետոյ շրջիցիս մերկա-
գոյն քան զասնդխտոռն։)*Իսկ 'ի վախ 32
ճանի իբրև զօձահար տարածանիցիս։
և իբրև իժի թոյնք սփռեսցին։* Աչք 33
քո իբրև տեսանիցեն զկին օտար, բե
րան քո յայնժամ՝ խօսեսցի զթիւրս։
* Իսկ անկեալ դնիցիս իբրև 'ի սիրտ 34
ծովու։ և իբրև զնաւուղիղ 'ի բա-
զում ալեկոծութիւնս։ *Իսկ ասաս- 35
ցես՝ հարկանէին զիս, և ինձ ոչ ցաւ
իւր։ այպն առնէին, և ես ոչ գիտէի։
երբ լինիցի առաւօտ՝ զի եկեալ խնդ-
րեցից՝ ընդ որում շրջեցայց։

## ԳԼ։ ԻԴ։

‖ Սղմ. 23. 17.

Որդեակ՝ ‖ մի նախանձիր ընդ չարս։ 1
և մի ցանկասցիս լինել ընդ նոսա։
* Զի զսուտ խորհի սիրտ նոցա։ և 2
զցաւս խօսին շրթունք նոցա։
*Իմաստութեամբ շինի տուն. և հանճա 3
րով կանգնի։ *Իսկ խորհրդով լնանին 4
շտեմարանք։ ամ մեծութեամբ պատուա
կանաւ և բարեաւ։ *Լաւ է իմաստուն 5
քան զհզօր։ և հանճարեղ քան զայն՝
որ ունիցի դաստակերտս մեծամեծս։
*Առաջնորդութեամբ մղի պատերազմ։ 6
և օգնականութեամբ խոհական սրտի։
*Իմաստութիւն և խորհուրդ բարեաց 7
'ի դրունս իմաստնոց։ * Իմաստունք 8
ոչ խոտորին յօրինաց Տն. այլ խորհին
'ի ժողովս իւրեանց։ *Անխրատից պա 9
տահի մահ։ և անզգամն մեռանի 'ի
մեղս։ պղծութիւն զայր ժանտագործ
աղտեղի առնէ յաւուր չարի։ *Իսկ յաւ 10
ուր նեղութեան մինչև սատակեսցի։

‖ Սղմ. 81. 4.

* ‖ Փրկեա զորս տանին 'ի մահ։ գնեա 11
զմահապարտն՝ և մի խնայեր։ * Ապա 12
թէ ասիցես։ ոչ գիտեմ զնա և ոչ նա
զիս ճանաչէ։ գիտասջի՛ր՝ զի Տր զսիրտ
ամենայն ճանաչէ։ և որ ստեղծ զշունչս
ամենայն. նա գիտէ զամ։ հատուցանէ
իւրաքանչիւր ումեք ըստ գործոց իւր
ոց։ *Կեր զմեղր որդեակ. զի բարի է։ 13
և զխորիսխ՝ զի քաղցրասցի կոկորդ քո։
*Նոյնպէս եղիցի հանճար իմաստու- 14
թեան յանձին քում։ զի եթէ գտցես
զնա՝ եղիցի բարեաւ վախճան քո։ և
յոյս քո մի պակասեսցի։ *Մի մատու 15
ցաներ զամպարիշտն յարօտս արդա-
րոց։ և մի խաբիր լրբութեամբ որովայնի։
* Զի եթէ եօթն անգամ անկցի ար- 16
դարն, կանգնեսցի։ Իսկ ամպարիշտք

17 տկարասցին 'ի չարիս։ *Եթէ կործա
նեսցի թշնամին քո՝ մի ոտն հարկա-
ներ. և 'ի գայթագղելն նր մի հպար-
18 տանար։ *Մի գուցէ տեսանիցէ Տր.
և ոչ լիցի հաճոյ նմա։ և դարձուցէ
19 զսրտմտութիւն իւր 'ի նմանէ։ *Մի
խնդար ընդ չարագործսն. և մի նա-
20 խանձիր ընդ մեղաւորսն։ * Զի ոչ լի
նի զաւակ չարացն. ճրագ ամբարշտաց
21 շիջցի։ *Երկիր յԱծ որդեակ՝ և 'ի
թագաւորէ։ և 'ի միոջէ 'ի նոցանէ մի
22 ապստամբիր։ *Քանզի՝ յանկարծա-
կի պահանջիցես զամբարիշտսն։ և
զպատուհաս երկոցունց ո՞վ ծանիցէ։

( Որդի՝ որ պահէ զբան՝ արտաքոյ կորս
տեան եղիցի։ զի ընդունելով ընկա-
լաւ զնա։ Մի ինչ սուտ ասասցի 'ի լե
զուէ թագաւորի։ և մի խաբէութիւն
'ի լեզուէ նորա ելցէ։ Սուսեր սուր է
լեզու թագաւորի, և ոչ մարմնաւոր։
և որոք մատնեսցի նմա՝ խորտակեսցի։
Զի եթէ սրեսցի սրտմտութիւն նորա՝
յօդիւք հանդերձ սատակեսցէ զմար-
դիկս։ և զոսկերս մարդկան կերիցէ։
և այրեսցէ իբրև զբոց։ և իբրև զգէշ
եղիցի 'ի բոյն արծուեաց։ Յիմոց բա
նից երկի՛ր որդեակ։ և ընկալեալ զնո
սա՝ ապաշխարեա։ )

Այս յունս ոչ գոյր լատինացւոցն.

## ԳԼ։ Լ։

1 Զայս ասէ այր ցհաւատացեալս
Այ՟։ լուռ եղէց. զի անմտագոյն
2 եմ քան զամ մարդ։ *Իսկ իմաստութիւն
3 մարդոյ ոչ գոյ յիս։ *Այ ուսոյց ինձ
զիմաստութիւն. և գիտութեան սրբոց
խելամուտ եղէ։ և ճանաչեմ զսրբու-
4 թիւն։ *Ո՞վ ել յերկինս՝ և էջ։ ո՞վ ժո-
ղովեաց զհողմս 'ի գոգ իւր։ ո՞վ ամփո
փեաց զջուր 'ի ձորձս իւր։ ո՞վ կալաւ
զամ զծագս երկրի։ զի՞նչ անուն է նր։
և կամ՝ զի՞նչ անուն որդւոյ նր՝ զի գի-
5 տասցես։ *‖ Ամ բանք Այ ընտիրք։ և
պաշտպան լինի նոքքն երկիւղածաց իւր
6 ոց։ *‖ Մի յաւելուր 'ի բանս նր. զի
մի յանդիմանեսցէ զքեզ՝ և սուտ լի-
7 նիցիս։ *Երկուս ինչս խնդրեմ 'ի քէն
Տր։ մի հաներ յինէն զշնորհս մինչև
8 մեռեալ իցեմ։ *Զբան զուր և սուտ
հեռի արա յինէն։ զմեծութիւն և զաղ-
քատութիւն մի տար ինձ։ այլ կշռեա
ինձ զպարժանն բաւականութեամբ։
9 * Զի մի մեծացայց՝ և ստեցից։ և ա-
սիցեմ. թէ ո՞ տեսանէ զիս։ կամ աղ-
քատացայց՝ և գողացայց. և երդուայց
10 յանուն Տն Այ իմոյ։ *Մի մատներ
զծառայ 'ի ձեռս տեառն իւրոյ։ զի մի
երբեք անիծանիցէ զքեզ՝ և ապակա-
նիս

‖ Սղմ. 11. 7.
‖ 2. Օրէ 4. 2։ և 12. 32.

նիցիս ։ *Ծնունդ չար՝ զհայր իւր ա֊ 11
նիծանէ . և զմայր իւր ո՛չ օրհնէ ։
*Ծնունդ չար՝ արդար համարի զանձն 12
իւր ։ և զելս անձին իւրոյ ո՛չ լուանայ ։
*Ծնունդ չար՝ ամբարտաւան աչս 13
ունի ։ և արտևանամբք իւրովք հպար
տանայ ։ *Ծնունդ չար՝ իբրև զսու֊ 14
սեր ունի զատամունս իւր ։ և զժանիս
իւր իբրև զկորոցս ։ մաշել և ուտել
զխոնարհս երկրի ։ և զաղքատս ՚ի
մարդկանէ ։

## Գլ ։ ԻԴ ։

*‖Ղևտ. 19. 15. Բ. Օրէ. 1. 17. և 16. 19. Սիրաք. 42. 1.*

Զայս ասեմ իմաստնոց ։ ‖ Խելա֊ 23
մուտ լինել երեսանց՝ մի՛ ամե
նևին չէք ։ ակն առնուլ ՚ի դատաստանի չէ
և բարւոք ։ *Որ ասէ զամբարիշտն թէ 24
արդար է . անիծեալ ՚ի ժողովրդոց
եղիցի . և ատելի ազգաց ։ *Իսկ որք 25
յանդիմանեն . նոքա լաւք երևեսցին ։
և ՚ի վերայ նո՛ց եկեսցէ օրհնութի ։
*Շրթունք սիրեսցեն զպատասխա֊ 26
նիս բանից բարեաց ։ որ պատասխանի
տայ բանս դիմադարձութե . պատրաս
տէ անձին իւրում բանս հեռանալոյ ։
*Պատրաստեա՛ յելս զգործս քո . և պատ 27
րաստեա՛ զդաստաստանս քո ։ և երթ
զհետ նո՛ր ։ և շինեսցես վերստին զտուն
քո ։ *Մի՛ լինիր վկայ սուտ ընկերի 28
քոյ ։ և մի՛ լայնիր շրթամբք քով ։
*Մի՛ ասիցես՝ թէ զոր օրինակ արար 29
նա ինձ . արարից նմա ։ և հատուցից
նմա՝ ո՛չ զրկեացն զիս ։ *Իբրև անդաս 30
տան մի է՝ այր անզգամ ։ և իբրև զայգի
այր պակասամիտ ։ *Եւ եթէ թողուս 31
զնա՝ խոպանանայ՝ մոլախոտի և ամե֊
նևին լքանի ։ և քարինք ցանգոյ նորա
քրին ։ *Եւ յետոյ ասիցէ՝ թէ զզջա֊ 32
ցայ . և հայեցայ ընտրել զխրատ ։ ‖ Մի՛ն
չև յերբ անկեալ դնիս ո՛վ վատ ։ Երբ
՚ի քնոյ զարթիցես ։ *Սակաւիկ ինչ 33
ննջիցես ։ սակաւիկ ինչ դադարեսցես ։
և փոքր ինչ ընդ գրկիցես զձեռն քո ՚ի
վե՛ր լանջաց քոց ։ և եթէ զայս արաս֊
ցես ։ *Եկեսցէ իբրև զկարապետ աղ 34
քատութի քո ։ և կարօտութի քո իբրև
զարագահոտն սուրհանդակ ։

*զանդաստանս քո*

*‖Առ. 20. 22.*

*‖Առ. 6. 9.*

## Գլ ։ Լ ։

Տզրկի երեք դստերք էին . սիրով 15
սիրեցեալք ։ և երեքեան նոքա ո՛չ
յագեցուցին զնա ։ և չորրորդն ո՛չ լցաւ
ասել շատ ։ *Դժոխք՝ և կորուստ՝ և 16
սէր կանանց՝ և տարտարոս ։ և երկիր
ո՛չ յագի ջրով ։ և ջուր՝ և հուր՝ ո՛չ
երբէք ասեն շատ ։ *Ակն՝ որ ծաղր առ֊ 17
նէ զհայր ։ և անարգէ զծերութի մօր .
խլեսցեն զնա ագռաւք ձորոց ։ և կե֊

18 րիցեն զնա ձագք արծուեաց ։ *Երեք
էն՝ զորս անհնարին է ինձ իմանալ ։ և
19 զչորրորդն ո՛չ ճանաչեմ ։ *Զհետս ար
ծուոյ թռուցելոյ ։ և զճանապարհս
օձի ՚ի վերայ վիմի ։ և զշաւիղս նաւու
ընդ ծով գնացելոյ ։ և զճանապարհս
առն յերիտասարդութե իւրում ։
20 *Այնպիսի է և ճանապարհ կնոջ շնա
ցողի ։ զի յորժամ գործէ ինչ , լուա֊
նայ . և ասէ , ոչինչ գործեցի չար ։
21 *Երիւք շարժի երկիր . և չորրորդին
22 ո՛չ կարէ հանդարտել ։ *Եթէ ծառայ
թագաւորեսցէ ։ և անմիտ եթէ յա֊
23 գեսցի հացի ։ *Եւ աղախին եթէ
հանիցէ զտիկին իւր ։ և կին ատելի
24 եթէ դիպիցի առն բարւոյ ։ *Չորք
էն . որք փոքրագոյնք էն ՚ի վե՛ր երկրի ։
և նոքա իմաստնագոյնք էն քան զիմաս
25 տունս ։ *Մրջիւն՝ որոյ ո՛չ գոյ զօրու֊
թի . և պատրաստէ յամարայնոյ զկե֊
26 րակուր իւր ։ *Եւ ճագար ազգ անհզ
զօր ։ որք արարին ՚ի վէմս զդադարս
27 իւրեանց ։ *Առանց թագաւորի է մա
րախ . և զօրաժողով լինի իբրև ՚ի մի
28 ջէ հրամանէ օրինօք ։ *Եւ սարդ՝ կռ֊
ուեալ ձեռօք ՚ի յորմն . որ դիւրին է առ
նուլ . բնակի ՚ի յարկս թագաւորաց ։
29 *Երեք էն՝ որք պա՛րծ շրջին . և չոր֊
30 րորդն գեղեցիկ ճեմէ ։ *Կորիւն առիւ
ծու հզօր է քան զանասունս . որ ո՛չ
զանգիտէ . և ո՛չ զթիկունս դարձուցա
31 նէ ՚ի թշնամւոյ ։ *Եւ աքաղաղ . որ
շրջի ՚ի մէջ մարեաց սիգալով ։ և նո֊
խազ առաջնորդ հօտի ։ և թագաւոր
յորժամ հրապարակախօս լինի ՚ի մէջ
32 ազգաց ։ *Եթէ զանձն դիւրութեան
տացես ։ և ձգեսցես զձեռն քո կռուով,
33 անարգեսցիս ։ *Կթեա՛ կաթն՝ և եղի
ցի իւղ ։ ապա եթէ կարի ճմլեսցես
զպտկունս՝ ելանէ արիւն ։ և եթէ
ձգեսցես զբանս , ելցեն դատաստանք
և կռիւք ։

## Գլ ։ ԼԱ ։

1 Ամենայն բանք այ խօսեցեալք են ։
հրաման թագաւորի . զոր խրա֊
2 տեաց զնա մայր իւր ։ *Զի՛ որդեակ
Այ բանք են ։ անդրանիկդ քեզ ասեմ
որդեակ ։ զի՛ որդեակ պտուղ որովայ֊
նի իմոյ ։ զի՛ որդեակ ուխտից իմոց ։
3 *Մի՛ տար կանանց զմեծութի քո ։ և
զմիտս քո՝ և զկեանս՝ ՚ի խորհուրդս
յետինս ։ խորհրդով գործեա՛ զամ ։
4 խորհրդով արբ զգինի ։ *Մեծամեծք
բարկացողք են՝ զգինի մի՛ արբցեն ։
5 *Զի մի՛ յորժամ ըմպիցեն՝ մոռանայ
ցեն զիմաստութի . և ուղիղ ո՛չ կա֊
6 րասցեն դատել զտնանկս ։ *Տո՛ւք զար
բե֊

բեցուԹի՞ տրտմեցելոց ։ և զգինի ըմպել ցաւագնոտաց ։ * Զի արբցեն՝ և 7 մոռասցին զաղքատուԹիս իւրեանց՝ և զցաւս իւրեանց ո՛չ յիշեսցեն ։ * Բա՛ց զբերան քո բանիւ Այ ․ և դատեա՛ զամենեսեան ողջմտուԹեամբ ։ 8 * Բա՛ց զբերան քո՝ և դատեա՛ իրաւամբք ։ և խնդրեա՛ և որոշեա՛ զաղքատն և զտկարն ։ 9

## Գլ. ԻԵ.

Այսոք առակք Սողոմոնի Արքայի Իսրայէլի անքննելիք ։ զորս գրեցին բարեկամքն Եզեկիայի Արքայի Իսրայէլի հրէաստանի ։ 1

Փառք Այ ծածկեն զբանս ։ և փառք Թագաւորի՝ պատուէեն ըզհրամանս ։ 2 * Երկին բարձր՝ և երկիր խոր ։ սիրտ Թագաւորի անքննելի ։ 3 * Փո՛րձ տես զանփորձ արծաԹոյ ։ և սրբելով սրբեսցի ամ ։ 4 * Սատակեա՛ զամբարիշտս յերեսաց Թագաւորի ։ և ուղղեսցի արդարուԹբ աԹոռ նր ։ 5 * Մի՛ հպարտանար առաջի Թագաւորի ։ և 'ի տեղիս մեծամեծաց մի՛ մատչիր ։ 6 * Զի լա՛ւ է քեզ՝ Թէ ասիցէ ոք ․ 'ի վեր ա՛ռ զիս մատի՛ր ։ քան Թէ կորանայցես առաջի հզօրի ։ 7 * Զորինչ տեսին աչք քո , խօսեա՛ց ։ մի՛ յանդուգն անկանիցիս 'ի մարտ ․ զի մի՛ յետոյ զղջանայցես ։ յորժամ նախատիցէ զքեզ բարեկամ քո ։ 8 * Խո՛յս տուր՝ մի՛ արհամարհեր ։ 9 * Մի՛ դուցէ նախատիցէ զքեզ բարեկամն ։ և ԹշնամուԹի և մարտ քո ո՛չ մեկնեսցի ։ այլ լինիցի քեզ հանգոյն մահու ։ շնորհ և բարեկամուԹի ազատէ են ։ հաստատեա՛ զնն 'ի քեզ ։ զի մի՛ նախատ լինիցիս ։ և պահեա՛ զճանապարհս քո հաշտուԹբ ։ 10 * Ոսկի խնծոր ընդ սարդիոն յեռեալ ։ նոյնպէս խօսիլ զբանս իմաստունս ։ 11 * 'Ի գինտ ոսկի՝ սարդիոն պատուական յեռեալ ։ բան իմաստուն՝ յունկնդիր լսելիս ։ 12 * Որպէս ձիւնաբեր ամարայնի՝ տօԹացելոյ օգնական է ․ նոյնպէս հրեշտակ հաւատարիմ ․ որոց առաքեն զնա՝ զանձինս յուսացելոց իւրոց շահի ։ 13 * Որպէս հողմք՝ և ամպք ․ և անձրևք սաստիկք ․ նոյնպէս են՝ և որք պարծին 'ի տուրս ստուԹէ ։ 14 * ‖ ՅերկայնմտուԹէ յաջողուԹի Թագաւորի ։ լեզու արձակ փշրէ զոսկերս ։ 15 (‖ Վեր. 15. 1.) * Մեղր յորժամ գտանիցես՝ չափո՛վ կերիջիր ․ դուցէ յագեսցիս՝ և փսխեսցես ։ 16 * Մի՛ յաճախեր ոտիւք քովք առ բարեկամ ։ դուցէ յագեսցի քև ․ և ատիցէ զքեզ ։ 17 * Իբրև սուսեր և սլաք սրեալ ․ նոյնպէս և այր՝ որ վկայէ զբա- 18



րեկամէ իւրմէ՝ զվկայուԹի ստուԹէ ։ 19 * Ճանապարհք չարի ․ և ոտք անօրինի կորիցեն յաւուր չարի ։ 20 * Որ հանէ զբաճկոն յաւուր ցրտոյ ․ ո՛րպ քացախ վիրի անօգուտ է ․ նոյնպէս հասեալ ցաւք մարմնոյ տրտմեցուցանեն ըզսիրտս ։ և ո՛րպ ցեց հանդերձի՝ և որդն փայտի ․ նոյնո՛պ տրտմուԹի վնասակար է սրտի առն ․ 21 * ‖ ԵԹէ քաղցեալ է Թշնամին քո՝ կերակրեա՛ զնա ։ և եԹէ ծարաւի է՝ տո՛ւր ըմպել նմա ։ (‖ Հռոմ. 12. 20.) 22 * Զայս իբրև առնիցես՝ կայծակունս հրոյ կուտեսցես 'ի վերայ գլխոյ նր ։ և 23 Տր հատուսցէ քեզ զբարիս ։ * Հողմ հիւսիսոյ զամպս յարուցանէ ։ և երեսք 24 լիրբք զլեզու գրգռեն ։ * ‖ Լա՛ւ է բնակիլ առ անկեան 'ի տանիս՝ քան ընդ կնոջ բամբասողի 'ի տան միում ։ (‖ Վեր. 21. 19. անկիւն) 25 * Որպէս ջուր ցուրտ անձին ծարաւոյ ախորժելի է ․ նոյնպէս և աւետիք բա- 26 րեաց՝ յերկրէ հեռաստանէ ։ * ԵԹէ ոք զակն աղբեր խնուցու ․ և զելս ջրոյ ապականիցէ ․ նոյնպէս անվայելլուչ է արդարոյ անկանիլ առաջի ամ- 27 պարշտի ։ * ‖ Մեղր շատ ուտել չէ՛ բարւոք ․ այլ յարգել պա՛րտ է զբանս (‖ Սիրա. 3. 22.) 28 պատուականս ։ * Որպէս քաղաք կործանեալ 'ի պարսպաց՝ և անպարիսպ իցէ ․ նոյնպէս և այր՝ որ ո՛չ խորհրդով ինչ գործիցէ ։

## Գլ. ԻԶ.

1 Որպէս ցօղ յամարայնի ․ և անձրև 'ի հունձս ։ նոյնպէս ո՛չ է պիտոյ պա- 2 տիւ անզգամի ։ * Որպէս Թռչունք և ճնճղուկք Թռանին՝ նոյնպէս անէծք 3 զուր ուռեք ո՛չ եկանեն ։ * Ո՛րպ մտրակ ձիոյ ․ և խԹան իշոյ՝ նոյնո՛պ գաւազան 4 ազգի անմտի ։ * Մի՛ տար անզգամին զպատասխանի ըստ նր անզգամուԹեն ։ 5 զի մի՛ լինիցիս նմանօղ նր ։ * Այլ տո՛ւր զպատասխանի ․ զի մի՛ երևեսցի իմաստ- 6 նագոյն յանձն իւր ։ * 'Ի ճանապարհաց իւրոց նախատ լինի՝ որ առաքէ զբան 'ի ձեռն անմիտ հրեշտակի ։ 7 * Կարճեա՛ զգնացս ոտից ․ և զառակս 8 'ի բերանոյ անզգամի ։ * Որ դնէ զքար 'ի պարսատիկս , նման է այնմ , որ դնէ 9 զպատիւ անզգամի ։ * Փշալիցք են ձեռք արբեցողաց ։ և ծառայուԹի 'ի 10 ձեռս անզգամի ։ * Բազում մրրկօք ծփին ամ՝ մարմինք անզգամաց ․ քանզի խորտակին յիմարուԹիք նոցա ։ 11 * ‖ Ո՛րպ շուն յորժամ դառնայ անդրէն 'ի փսխած իւր՝ և ատելի լինի ։ նոյնո՛պ և անզգամն չարուԹբ անձին իւրոյ ․ յորժամ դառնայ անդրէն 'ի մեղս իւր ։ (Է ամօԹ՝ որ ածէ 'ի մեղս զմեղս ․ (‖ 2. Պետ. 2. 22.)

և է ամօթ՝ որ զփառս և զշնորհս:)

12 *Տեսի զայր յանձն իւր պանծացեալ թէ իմաստուն իցէ: բայց յոյս գոյր յանզգամին քան 'ի նմա: 13 *‖Զվատն յորժամ յուղի առաքես՝ ասէ. առիւծ ունի զճանապարհս. և զհրապարակս սպանողք: 14 *Որպէս դուռն որք շրջին 'ի ծղխնուջ, նոյնպէս և վատ 'ի մահճի իւր: 15 *‖Թաքուցանէ վատ զձեռս իւր 'ի ծոց. և 'ի բերան իւր դանդաղի տանել: 16 *Իմաստնագոյն անձին իւրում թուի վատն. քան զայն՝ որ զլրութե աւետիս բերիցէ: 17 *Որ բուռն հարկանէ զշան ձեռոյ: նոյնպէս է մարդ՝ որ անկանիցի յայլոյ դատաստանս: 18 *Որպ թունաւորքն առաջի արկանեն զբանս մարդկան: և որ վաղվաղէ ընդդէմ՝ բանից՝ նախ նա ընկճի: 19 *Նոյնպէս և ամենեքեան՝ որք դարանակալք լինին իւրեանց բարեկամաց: և յորժամ յանդիմանիցին, ասեն. մեք ընդ խաղ արարաք: 20 *Ի բազում փայտից զօրանայ հուր: և ուր ոչ գոյ այր երկմիտ՝ դադարի կռիւ: 21 *Կրակարանք կայծականց. և փայտ հրոյ: ‖և այր բանսարկու առ 'ի յուզել զկռիւ: 22 *Բանք սուտակապաստաց կակուղք են: բայց արկանեն 'ի շտեմարանս մարտի: 23 *Որ տայ զարծաթ նենգութբ. իբրև զխեցի համարեալ է: շրթունք ողորկք ծածկեն զսիրտ տրտմագինս: 24 *Շրթամբք իւրովք յայտնի առնէ ամ, որ լայ զթշնամի իւր. և 'ի սրտի իւրում նիւթէ զնենգութի: 25 *Եթէ աղաչիցէ զքեզ թշնամին քո. և 'ի ձայն բարձր աղերսիցէ. մի հաւանիր նմա: զի եօթն չարիք կան 'ի սրտի նր: 26 *Որ ծածկէ զթշնամութի, հաստատէ զնենգութի: սուզանէ զմեղս իւր բանադէտն յատենի: 27 *Որ փորէ զխորխորատ ընկերի իւրում, անկցի ինքն 'ի նոյն: և որ դլէ զվէմ, անձին իւրում գլեսցէ: 28 *Լեզու սուտ՝ ատեայ զճշմարտութի. և բերան անդադար, առնէ խռովութիս:

(Margin: ‖Սիր. 22.13. — ‖Սիր. 19.24. — յառնչանէ — նենգաւորք — ‖Սիր. 15.18. — շաժ)

## ԳԼ: ԻԷ:

Մի պարծիր առ վաղիւն. քանզի ոչ գիտես՝ զինչ ծնանիցի քեզ վաղիւն: 2 *Գովեսցէ զքեզ ընկերն, և մի քո բերան: օտարն, և մի քո շրթունք: 3 *‖Ծանր է քար. և դժուարաբառնալի աւազ: բայց բարկութի անզգամի ծանրագոյն է քան զերկոսեանն: 4 *Անողորմ է սրտմտութի. և սաստիկ է բարկութի: այլ նախանձ և ոչ ինչ ժուժէ կեալ: 5 *Լաւ է յանդիմանութի յայտնեալ՝ քան զբարեկամութի ծածկեալ: 6 *Լաւ են վէրք բարեկամի. քան զկամակոր համբոյրս թշնամւոյ: 7 *‖Անձն յագեալ՝ զխորիսխ և զմեղր արհամարհէ: բայց անձին կարօտելոյ՝ և դառն իբրև ըզ քաղցր թուի: 8 *Որպ թռչուն թռչի 'ի բունոյ իւրմէ: նոյնպէս և մարդ ստրկանայ՝ յորժամ օտարանայցէ յիւրոց տեղեաց: 9 *Իւղով՝ և գինեաւ՝ և խնկով զուարճանայ սիրտ: և բեկանի 'ի տրտմութէ անձն: 10 *Զբարեկամ քո. և զբարեկամ հայրենի մի թողուր: և 'ի տուն եղբօր քոյ մի մտաներ թշուառացեալ: լաւ է բարեկամ մերձաւոր. քան զեղբայր 'ի հեռաստանի բնակեալ: 11 *Իմաստուն լեր որդեակ՝ զի ուրախ լինիցի սիրտ քո: և 'ի բաց դարձո 'ի քէն զբանս թշնամանաց: 12 *Խորագէտն՝ 'ի գալ չարեաց թաքեացաւ. և անզգամք ընդ առաջ երթեալ 'ի տուժս անկցին: 13 *‖Զերծ 'ի նմանէ զհանդերձս նր: զի էանց թշնամանս գիրն. քանզի նա զայլոցն ապականէ: 14 *Որ գովէ զբարեկամ ընդ առաւօտս բարձր ձայնիւ: քան զանիծանօղն ոչինչ առաւել համարեսցի: 15 *Կաթիլ հանէ զմարդ 'ի տանէ իւրմէ յաւուր ձմերայնոյ: նոյնպէս և կին անզգամ հանէ 'ի տանէ իւրմէ զայր իւր: 16 *Հիւսիս հողմ է հիւսիսի. բայց անուամբ աջու կոչի: 17 *Երկաթ զերկաթ սրէ. և այր դրդուէ զերեսս ընկերի իւրոյ: 18 *Որ տնկէ զթզենի՝ կերիցէ զպտուղ նր: և որ պահուէ զտէր իւր՝ պահեսցէ զնա: 19 *Որպ ոչ են նմանք երեսք երեսաց: նոյնպէս և չեն նմանք սիրտք սրտից: 20 *‖Դժոխք և կորուստք անյագք են. նոյնպէս և աչք ապահ մարդկան: պիղծ է առաջի Տն՝ որ ար ձակէ զաչս. և անխրատք՝ և ցոփք լեզուաւ: 21 *‖Փորձ արծաթոյ և ոսկւոյ 'ի բովս: և այր փորձի 'ի բերանոյ գովչաց իւրոց: սիրտ անօրինի խնդրէ զչարիս. և սիրտ ուղիղ՝ քննէ զգիտութի: 22 *Եթէ տանջես զանզգամն 'ի մէջ ատենի. և անարգես զնա: սակայն զանզգամութին ոչ մերժես 'ի նմանէ: 23 *Ծանուցանելով ծանիր զանձինս խաշանց քոց. և հաստատեա զսիրտ քո 'ի վր երամակաց քոց: 24 *Մինչի ոչ յաւիտենական է ոյժ առն. և զօրութի. և իշխանութի. և ոչ տուեալ է նմա յազգաց յազգս: 25 *Խնամ կալ բանջարոյ 'ի դաշտի. և հնձեսցես զխոտ. և ժողովեա զխոտ դալար: 26 *‖Զի եղիցին քեզ ոչխարք ձորձաբերք. գարմանեաւ զդաշտս՝ զի եղիցին քեզ գառինք: 27 *Որդեակ, յինէն ունիր զպատգամս

(Margin: ‖Սիրաք. 22.18. — ծածկեալ է — ‖Յոբ. 6.7. — ‖Սիր. 20.16. — ‖Սիրաք. 14.10. — ‖Սիր. 17.3. — ‖1. Տիմ. 6.8.)

զօ-

զօրաւորս 'ի կեանս տան քոյ . և 'ի
կեանս բարեկամի քոյ ։

## ԳԼ ։ ԺԸ ։

Փախուցեալ երթայ ամբարիշտն 1
առանց ուրուք հալածելոյ ։ բայց
արդարն իբրև զառիւծ յանձնապաս_
տան է ։ * Ա՟ մեղաց ամպարշտաց դա 2
տաստանք յառնեն ։ և այր խորագէտ
չիջուցանէ զնա ։ * Հզօր առ ամպարշ 3
տութե իւրում զրպարտէ զտնանկս ։
որպէս անձրև սաստիկ և անօգուտ ։
* Նոյնպէս որք թողուն զօրէնս . և գո 4
վեն զամպարշտութի ։ իսկ որք սիրեն
զօրէնս՝ պատեն զինքեամբք զպարիսպ ։
* Արք չարք ոչ իմանան զիրաւունս ։ 5
որք խնդրեն զՏր՟ իմաստունք լինին
յա՟մի ։ * Լաւ է աղքատ՝ որ գնայ 6
ճշմարտութբ՟ քան զմեծատուն սուտ ։
* Պահէ զօրէնս որդի իմաստուն ։ իսկ 7
որ արածէ զորկորստութի, անարգէ
զհայր իւր ։ * Որ լնու զտուն իւր 'ի 8
տոկոսեաց և 'ի վաշխից . ժողովէ զնա
այնմ, որ ողորմի աղքատաց ։ * Որ խո 9
տորեցուցանէ զունկն իւր՝ զի մի լուիցէ
օրինաց . և ինքն զիւր ուխտն պղծէ ։
* Որ մոլորեցուցանէ զուղիղս չար ճա 10
նապարհաւ . ինքն անկցի յապականու
թի ։ ամբիծք բաժանեսցեն զբարու
թիս նր՟ ։ և անօրէնք անցցեն առ բա
րեօքն . և մի մտցեն 'ի նոսա ։ * Իմաս_ 11
տուն թուի անձին իւրում այր մեծա
տուն ։ և աղքատ հանճարեղ ստգտա
նէ զնա ։ * Ա՟ օգնականութե արդա 12
րոց՝ բազումք լինին փառք ։ և 'ի տե_
ղիս ամպարշտաց՝ սատակին մարդիկ ։
* Որ ծածկէ զամպարշտութիւնս իւր՝ 13
ոչ յաջողեսցի ։ իսկ որ պատմէ՝ և յան
դիմանէ՝ սիրելի եղիցի ։ * Երանելի է 14
այր՝ որ արհամարհիցէ զա՟մ վ՟ն եր_
կիւղածութե ։ որ խիստ է սրտիւ՝ անկ
ցի 'ի չարիս ։ * Առիւծ քաղցեալ . և 15
գայլ ծարաւի . որ աղքատ է՝ և բռն
լինի ազգի տնանկի ։ * Թագաւոր կա 16
րօտ մտօք՝ մեծ զրպարտող ։ իսկ որ
ատեայ զանիրաւութի՝ երկայնակեաց
լինի ։ * Այր՝ որ զմահապարտ յերաշ 17
խի առնու՝ փախստական լինի ։ ոչ 'ի
հաստատութե կայցէ ։ Խրատեա զոր
դի քո . և հանգուսցէ զքեզ . և տացէ
զզարդ անձին քում ։ և ոչ հնազան_
դեսցի ազգի անօրինի ։ * Որ գնայ ար 18
դարութբ՟, օգնականութիւն գտցէ ։
իսկ որ գնայ 'ի ճանապարհս թիւրս՝
նոքիմբք վարակեսցի ։ * Որ գործէ 19
զերկիր՝ լցցի հացիւ ։ և որ երթայ
զհետ դատարկութե՝ լցցի աղքատու_
թբ՟ ։ * Այր հաւատարիմ օրհնեսցի 20

Այր աղ- / քատ զր- / զրկող / զաղքատս, / նման է / անձրևոյ / սաստկի . / որ ոչ պտուղ / բերէ / տայ .

Մ էր . 19 . 1 .

Մ էր . 12 . 11 . Սիր . 20 . 30 .

յոյժ ։ Իսկ չարագործն 'ի պատուհասէ
մի ապրեսցի ։ որ ոչ պատկառի յերե_
21 սաց արդարոյ՝ ոչ է բարի ոք ։ * Որ
ակնածէ զերեսս անօրինաց յանդիմա
նել՝ չէ գովելի ։ այնպիսին պատառոյ
22 հացի վաճառէ զմարդ ։ * Փութայ
մեծանալ այր չարակն ։ և ոչ գիտէ՝
թէ այր ողորմած զօրանայ քան զնա ։
23 * Որ յանդիմանէ զմարդ 'ի ճանա_
պարհս իւր, շնորհակալութի ընկալ
ցի առաւել քան զսուտակապասն լե
24 զուաւ ։ * Որ մերժէ զհայր իւր, կամ
զմայր . և համարի չմեղանչել . կցորդ
25 է նա արանց ամբարշտաց ։ * Այր ա_
գահ դրդուէ զհակառակութի . իսկ
որ յուսացեալ է 'ի Տր՟ 'ի խնամակա_
26 լութե եղիցի ։ * Որ յուսայ յանդգնու
թի սրտի՝ այնպիսին անզգամ է ։ որ
27 գնայ իմաստութբ՟, ապրեսցի ։ * Որ
որ տայ աղքատաց՝ ոչ կարօտասցի ։
իսկ որ դարձուցանէ զակն իւր 'ի նոցա
նէ, 'ի բազում կարօտութե եղիցի ։
28 * 'Ի տեղիս ամբարշտաց հեծեն ար_
դարք ։ և 'ի նց՟ կորստեանն բազմանան ։

Ս էր . 13 . 11 . Ն 20 . 21

## ԳԼ ։ ԺԹ ։

1 Լաւ է այր յանդիմանիչ քան զխոստա
պարանոց . քանզի յանկարծակի
հուր հարեալ զնմանէ՝ ոչ լինի բժշկ
2 կութի ։ * 'Ի գովութե արդարոց՝ ու_
րախ եղիցին ժողովուրդք ։ և 'ի իշխա_
նութիս ամբարշտաց՝ հեծեն արդարք ։
3 * Այր՝ որ սիրէ զիմաստութի, բերկ_
րեսցի հայր նր՟ ։ Իսկ որ արածէ զբոզս ,
4 կորուսանէ զմեծութի ։ * Թագաւոր
արդար՝ կանգնէ զաշխարհ ։ և այր ա_
5 նօրէն կործանէ ։ * Որ պատրաստէ յե
րեսս բարեկամի իւրոյ զորոգայթ ,
շուրջ արկանէ զայն զոտիւք իւրովք ։
6 * Առն մեղաւորի մեծ է որոգայթ ։
բայց արդարն 'ի խնդութե և յուրա_
7 խութե եղիցի ։ * Գիտէ արդարն դա
տել զաղքատս ։ իսկ ամպարիշտն ոչ
իմանայ դատել ։ ( և աղքատի ոչ գոյ
8 նմին միտք իրաւախոհք ։ ) * Արք անօ_
րէնք հուր հարին զքաղաքէ ։ և իմաս
տունք դարձուցին զբարկութի ։
9 * Այր իմաստուն դատէ զազգս ։ այր
անզգամ՝ 'ի բարկանալն իւրում ծաղր
10 լինի . և ոչ ամաչէ ։ * Արք արեանց ա_
տեն զարդարն ։ իսկ ուղիղք փափա_
11 գեսցին յանձն նորա ։ * Բովանդակ
զբարկութի իւր արտաքս բերէ ան_
զգամն ։ իսկ իմաստունն մեղմով համ_
12 բերէ ։ * Թագաւոր՝ որ հաւանի բանից
անիրաւութե ։ ամենեքեան՝ որք ընդ
13 նմա են՝ անօրէնք են ։ * Փոխատուք՝
և փոխառուք 'ի մի վայր եկեալք ։ զայ

Պ ուէ 15 . 13 .

ցելութիւն առնէ երկիւղն Տր ։
14 *Թագաւոր՝ որ ճշմարտութեամբ դատէ զաղքատս, աթոռ նորա ՚ի վկայութիւն հաստատեսցի ։ 15 *Գանք՝ եւ յանդիմանութիւնք տան զիմաստութիւն ։ մանուկ մոլորեալ՝ յամօթ առնէ զծնօղս իւր ։
16 * Ի բազմանալ ամբարշտաց՝ յաճախեն մեղք . եւ ՚ի նոցա կործանմանն արդարք յերկեղի լինին ։ 17 * Խրատեա զորդի քո՝ եւ հանգուսցէ զքեզ ։ եւ տացէ զզարդ անձին քում ։ 18 * Ոչ գտցի առաջնորդ ազգի անօրինի ։ իսկ որ պահէ զօրէնս՝ երանելի է ։ 19 * Բանիւք ոչ խրատեսցի ծառայ խիստ . զի թէպէտ եւ իմանայ՝ ոչ հնազանդի ։ 20 * Յորժամ տեսանիցես զայր յանդուգն բանիւք, գիտասցիր՝ զի յոյս գոյ յանզգամին քան ՚ի նմա ։ 21 * Որ փափկանայ ՚ի մանկութենէ, ծառայ լիցի . եւ յետոյ վտանգեսցի յանձն իւր ։ 22 * Այր բարկացօղ յարուցանէ զհակառակութիւն ։ ( եւ այր հեզ՝ դադարեցուցանէ զմեղս ։ ) եւ այր ոտնմոլ փորեաց զմեղս ։ 23 *[1] Ամբարտաւանութիւն զայր նկուն առնէ . իսկ զխոնարհս կանգնէ փառօք Տր ։ 24 * Որ բաժանակից լինի գողոյ, ատեայ զանձն իւր ։ եւ եթէ երդումն առաջի դնիցի, զար հուրեալ ոչ եւս պատմեսցէ ։ 25 * Որք երկնչին՝ եւ ամաչեն ՚ի մարդկանէ՝ ընկճեցին ։ իսկ որք յուսացեալքն են ՚ի Տր, ուրախ լիցին ։ անպարտութիւն առնէ զգայթագղութի . եւ որ յուսայ ՚ի Տր՝ ապրեսցի ։ 26 * Բազումք սպասեն զերեսս իշխանաց ։ բայց ՚ի Տէ լիցին իրաւունք առն ։ 27 * Պիղծ է արդարոյ այր անիրաւ ։ եւ պիղծ է անօրինի՝ ուղիղ ճանապարհ ։

[1] Յոբ. 22.29.

անիրաւ_ ին՝

## Գլ. ԼԱ.

10 Կին ժրագլուխ եթէ ոք գտանիցէ . պատուականագոյն է այնպիսին քան զականս պատուականս ։
11 * Վստահ է ՚ի նա սիրտ առն նր . այնպիսին բազում աւարաց ոչ կարօտասցի ։ 12 * Քանզի գործակից է առն իւրում ամ բարեաց՝ եւ կենակից՝ եւ ոչ չարաց ։ 13 * Գտեալ ասր եւ կտաւ՝ արար հանդերձս պիտանիս ձեռօք իւրովք ։
14 * Նա՜ եղեւ իբրեւ զնաւ ջահաքեր ։ ՚ի հեռաստանէ ժողովէ զմեծութի ։
15 * Յառնէ ընդ առաւօտս . եւ տայ զկերակուր ընտանեաց . եւ զգործ նաժշտաց ։ 16 * Տեսեալ զանդաստան գնեաց՝ եւ գնէ զնա, եւ ՚ի պտղոյ ձեռաց իւրոց գործէ զերկիր ։ 17 * Պնդեալ հզօրապէս զմէջ իւր ։ մխեաց զբազուկս իւր ՚ի գործ ։ 18 * Նա՜ ճաշակեաց՝ զի քաղցր է գործել, եւ ոչ շիջանի զամ գիշերս ճրագ նր ։ 19 * Զձեռս իւր ձգէ յօգուտ . եւ զմատունս իւր անձանձրոյթ տայ ՚ի լոյս ։ 20 * Զձեռս իւր բանայ տնանկաց . եւ զպտուղ կարկառէ աղքատաց ։
21 * Ոչինչ հոգայ ՚ի տան կողմանէ այր նր, յորժամ ուրեք յամիցի . զի ամենեքին որք ընդ նմա են, զգեցեալ են զկրկին պատմուճանս ։ 22 * Արար առն իւրում բեհեզս եւ ծիրանիս ։ եւ անձին իւրում արկանելիս ։ 23 * Երեւելի է ՚ի դրունս այր նորա . յորժամ նստցի ՚ի ժողովրդեան՝ ՚ի մէջ ծերոց բնակչաց երկրի ։
24 * Կտաւս արար՝ եւ վաճառեաց, եւ արկանելիս արար՝ քանանացւոց ։
25 * Զբերան իւր եբաց չափով՝ եւ իմաստութբ ։ զկարգ եդ լեզուի իւրում ։
26 * Զզօրութիւն՝ եւ զմեծ վայելչութիւն զգեցաւ ։ եւ ուրախ եղեւ յաւուրս յետինս ։ 27 * Հաստատունք են ճանապարհք տան նորա ։ եւ զհաց դատարկութե ոչ եկեր ։ զբերան իւր բանայ հանճարով՝ եւ օրինադրութեամբ ։
28 * Նա՜ ողորմութի նորա կանգնէ զորդիս նր . եւ այր նր գովէ զնա՝ եւ ասէ ։
29 * Բազումք դստերք ստացան զմեծութի . բազումք արարին զզօրութիւն ։ բայց դու առաւել եղեր՝ եւ անցուցեր զամենեքումբք ։ 30 * Սուտ հաճութի, եւ ընդունայն գեղ կնոջ ոչ գոյ ՚ի քեզ ։ քանզի կին բարեպաշտօն եւ իմաստուն օրհնեսցի ։ զերկիւղածս Տն գովէ նա ։
31 * Տուք նմա ՚ի պտղոյ շրթանց նորա ։ եւ գովեսցի ՚ի դրունս այր նորա ։ զի ճանապարհք առն առաջի երեսաց իւրոց երթիցեն, եւ յաջողեսցին յաւիտեանս յաւիտենից ։

# ԺՈՂՈՎՈՂ:

## ՈՐ ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍ, ԿՈՀԵԼԷԹ ՅՈՐՋՈՐՋԻ:

Գլուխ Առաջներորդ:

Բանք Ժողովողի Որդւոյ Դաւթի Սողոմոնի Արքայի Իսրայէլի Յեմ Լուծանելատուն: 1

ՈՒՆԱՅՆ ՈՒԹԻՒՆ ունայնութեանց ասաց Ժողովողն, ունայնութիւն ունայնութեանց՝ ամենայն ինչ ընդունայն է: 2 * Զինչ աւելի է 3 մարդոյ յամի վաստակս իւր. զոր տաժանի 'ի ներքոյ արեգական: * Ազգ 4 երթայ՝ և ազգ գայ, և երկիր յաւիտեան կայ: * Ծագէ արեգակն՝ և 5 մտանէ արեգակն՝ և 'ի տեղի իւր ձգի: * 'Ի ծագելն իւրում երթայ ընդ հա- 6 րաւ. և պատի զհիւսիսիւ: պատելով պատի: գնայ հողմ, և 'ի շրջանս իւր դառնայ հողմ: * Ամենայն ուխք 'ի 7 ծով գնան. և ծով ոչ լնանի: 'ի տեղիս յոր ուխք գնան, անդ նոքին դառնան 'ի գնալ: * Ամենայն բան ջանիւ. և 8 ոչինչ կարասցէ այր խօսել: ոչ յագեսցի ակն տեսանելով. և ոչ լցցի ունկն լսելով: * Զինչ է՝ որ եղև. նոյն է՝ որ 9 լինելոց է: և զինչ է՝ որ արարաւն. նոյն ինքն է՝ որ առնելոց է: * Եւ ոչինչ գոյ 10 յամի առժամայն 'ի ներքոյ արեգական: զի զոր խօսեսցի ոք՝ և ասասցէ: ահա այս նոր է: յառաջագոյն եղեալ է յաւիտենից եղելոցն նախ քան զմեզ: * Ոչ գոյ յիշատակ առաջնոցն. բայց 11 և ոչ 'ի վախճանի եղելոցն: ոչ գոյ նոցա յիշատակ հանդերձ եղելովքն 'ի վեր ջինսն: * Ես Ժողովող, եղէ թագաւոր 12

13 'ի վերայ Իլի յԵմ: * Եւ ետու զսիրտ իմ 'ի խնդրել և 'ի քննել իմաստութեամբ վասն ամենայնի եղելոց 'ի ներքոյ արեգական: վասզի զզբաղումն չար ետ Տր որդւոց մարդկան՝ զբաղել 'ի նմա:
14 * Տեսի միանգամայն զամ արարածս. զարարեալս 'ի ներքոյ երկնից: և ահա ամ ինչ ընդունայնութիւն է. և յօժա-
15 րութիւն հոգւոյ: * Թիւրեալն՝ ոչ կարասցէ զզարդ առնուլ: և պակասեալն՝ ոչ կարասցէ 'ի թիւ անկանել:
16 * Խօսեցայ 'ի սրտի իմում ասել. թէ ահա մեծացայ քան զամենեսեան. որք էին յառաջ քան զիս յԵմ: և ետու զսիրտ իմ գիտել զիմաստութիւն և զգիտութիւն: և յաւելայ իմաստութեամբ քան զամենեսեան. որք յառաջ եղեն քան
17 զիս յԵմ: * Եւ սիրտ իմ՝ ետես զբազում իմաստութիւն՝ և զգիտութիւն: զառակս և զհանճարս ծանեայ: սակայն
18 և այս յօժարութիւն է ոգւոյ: * Զի 'ի բազում իմաստութեան՝ է յոլովութիւն գիտութեան: և որ յաւելանայ 'ի գիտութիւն, յաւելանայ 'ի ցաւս:

Գլ: Բ:

1 Ասացի 'ի սրտի իմում. եկ՝ և փորձեցից զքեզ յուրախութեան. և տես 'ի բարութեան: ահա և այս ընդունայ-
2 նութիւն է: * Ծաղրն ասացի զբօսանս՝ և զուրախութիւն զինչ առնես զայդ:
3 * Եւ այց արարի. թէ սիրտ իմ ձգեսցէ խորհեցայ իբրև զգինի զմարմին իմ: և առաջնորդ 'է սրտի գեսցէ իմաստութեամբ: և զօրանալ յուրախ խելամտութեան: մինչև տեսից՝ որ իցէ բարին պատկերել որդւոց մարդկան. զոր արասցեն 'ի 'է գինւոյ ներքոյ արեգական: 'ի թիւ աւուրց կենաց
4 նոցա իւրեանց: * Յաճախեցի ինձ աշխատութիւնս. շինեցի ինձ ապարանս. տնկեցի ինձ

ինձ այգիս ։ * 5 Արարի ինձ պարտէզս՝ և դրախտս ։ և տնկեցի 'ի նոսա փայտս ամենապտղաբերս ։ * 6 Արարի ինձ աւազանս ջրոյ՝ առնել 'ի նոցանէ զանտառս զուռարձացեալ ծառոց ։ * 7 Ստացայ ծառայս՝ և աղախնայս՝ և ընդոծինք եղեն ինձ . և ստացուածք անդեոց և հօտից բազումք եղեն ինձ քան զամենեցուն եղելոց յառաջագոյն քան զիս յԵրուսաղէմ ։ * 8 Ժողովեցի ինձ զարծաթ և զոսկի և ստացուածս բազումս քան զԹագաւորաց ։ արարի ինձ գուսանս՝ և երգեցիկս՝ արս՝ և կանայս, և զփափկութիւնս որդւոց մարդկան ։ արարի ինձ տակառապետս՝ արս՝ և կանայս ։ * 9 Եւ մեծացայ առաւել քան զամենեսեան եղեալսն յառաջ քան զիս յԵրուսաղէմ, և իմաստութիւն յաւելաւ ինձ ։ * 10 Եւ զա̃մ ինչ զոր խնդրեցին աչք իմ, ոչ զրկեցայ 'ի նոցանէ ։ և ոչ արգելի զսիրտ իմ յա̃մ ուրախութենէ ։ զի սիրտ իմ ուրախ եղև յա̃մ վաստակս իմ . և այն եղև բաժին իմ յա̃մ վաստակոց իմոց ։ * 11 Եւ հայեցայ յա̃մ արարս իմ . զոր արարին ձեռք իմ, և 'ի վաստակս՝ զոր ջանացայ առնել, և ահա ա̃մ ունայն է և յօժարութիւն ոգւոյ ։ և ոչինչ է առաւելութիւն 'ի ներքոյ արեգական ։ * 12 Եւ հայեցայ տեսանել զիմաստութիւն՝ և զբօսանս՝ և զանզգամութիւն . քանզի ո՞վ է մարդ՝ որ երթիցէ զհետ խորհրդոց իւրոց . զոր ինչ արար ։ * 13 Եւ տեսի թէ է առաւելութիւն իմաստութեան քան զանմտութեան . ո̃պ առաւելութիւն լուսոյ քան զխաւարի ։ * 14 Իմաստնոյ աչք 'ի գլխոյ իւրում, և որ անմիտն է՝ ընդ խաւար գնայ . և ծանեայ՝ զի մի դիպուած է յամենեսին 'ի նո̃ ։ * 15 Եւ ասացի 'ի սրտի իմում ։ թէ ո̃պ դիպուած է անմտին . և ինձ դիպեսցի՝ և ընդէ՞ր իմաստնացայ . զաւելորդս խօսեցայ 'ի սրտի իմում ։ զի և այն ևս ունայնութիւն է ։ վ̃ն զի անմիտն յաւելորդացն խօսի ։ * 16 Քանզի ոչ գոյ յիշատակ իմաստնոյ ընդ անմտին յաւիտեան ։ վ̃ն զի արդէն ևս յաւուրսն որք գալոցն են . ա̃մ ինչ մոռացեալ եղև ։ և զիա՞րդ մեռանիցի իմաստունն ընդ անմտին ։ * 17 Եւ ատեցի միանգամայն զկեանս իմ ։ վասնզի չար էր 'ի վերայ իմ արարածն . որ արարաւն 'ի ներքոյ արեգական . զի ա̃մ ինչ ընդունայնութիւն է՝ և յօժարութիւն ոգւոյ ։ * 18 Եւ ատեցի զա̃մ վաստակս իմ . զոր ջանացայ 'ի ներքոյ արեգական ։ վ̃ն զի թողում զայն մարդոյ՝ որ լինելոց է զկնի իմ ։ * 19 Եւ ո՞վ գիտիցէ՝ իմաստուն լինիցի, թէ անմիտ . և իշխեսցէ ա̃մ վաստակոց իմոց՝ զոր ջանացայ . և յորս իմաստնացայ ը̃ արեգակամբս ։ սակայն և այն ունայն է ։ * 20 Եւ դարձայ հրաժարեալ սրտիւ իմով . յա̃մ վաստակոց իմոց՝ զոր վաստակեցի ընդ արեգակամբս ։ * 21 Զի է մարդ՝ զի վաստակ ն̃ր արդարութե̃բ և իմաստութե̃բ է ։ և մարդ՝ որ ո՛չ ջանացաւ 'ի նմա՝ տացէ նմա զմասն իւր ։ սակայն և այն ընդունայնութիւն է՝ և չարութիւն մեծ ։ * 22 Քանզի զի՞նչ օգուտ լինի մարդոյ յա̃մ վաստակս իւր . և յօժարութենէ սրտի իւրոյ՝ յորում ինքն ջանայ 'ի ներքոյ արեգական ։

23 * Զի ա̃մ աւուրք ն̃ր ցաւոց՝ և տրտմութե̃ զբօսանք իւր, և 'ի գիշերի ո՛չ ննջեսցէ սիրտ ն̃ր ։ սակայն և այն ունայնութիւն է ։ * 24 Եւ ոչ ինչ գոյ բարի մարդոյ՝ բայց զոր ուտէն՝ և ըմպէ . և զոր ցուցանէ բարի անձին իւրում 'ի վաստակսն իւրում ։ սակայն և զայն տեսի . զի 'ի ձեռանէ Ա̃յ է ։ * 25 Քանզի ո՞վ կերիցէ . որ ուտիցէ՝ և ըմպիցէ առանց ն̃ր ։ * 26 Զի մարդոյ բարւոյ առաջի երեսաց իւրոց ետ զիմաստութիւն՝ և զգիտութիւն՝ և զուրախութիւն ։ և մեղանչականին ետ զզբաղումն . յաւելուլ՝ և ժողովել՝ և տալ բարւոյն՝ առաջի երեսաց Ա̃յ ։ սակայն և այն ունայն է՝ և յօժարութիւն ոգւոյ ։

## ԳԼ ։ Գ ։

1 Ամենայնի ժամանակ է՝ և ժամ ա̃մ իրաց 'ի ներքոյ երկնից ։ * 2 Ժամանակ ծնանելոյ . և ժամանակ մեռանելոյ ։ Ժամանակ տնկելոյ՝ և ժամանակ խլելոյ ։ * 3 Ժամանակ սպանանելոյ . և ժամանակ բժշկելոյ ։ Ժամանակ քակելոյ . և ժամանակ շինելոյ ։ * 4 Ժամանակ լալոյ՝ և ժամանակ ծիծաղելոյ ։ Ժամանակ կոծելոյ . և ժամանակ կաքաւելոյ ։ * 5 Ժամանակ ձգելոյ զքարինս . և ժամանակ ժողովելոյ զքարինս ։ Ժամանակ գրկս արկանելոյ՝ և ժամանակ հեռանալոյ 'ի գրկս արկանելոյ ։ * 6 Ժամանակ խնդրելոյ . և ժամանակ կորուսանելոյ ։ Ժամանակ պահելոյ . և ժամանակ արտաքս հանելոյ ։ * 7 Ժամանակ պատառելոյ՝ և ժամանակ կարկատելոյ ։ Ժամանակ լռելոյ՝ և ժամանակ խօսելոյ ։ * 8 Ժամանակ սիրելոյ՝ և ժամանակ ատելոյ ։ Ժամանակ պատերազմի . և ժամանակ խաղաղութեան ։ * 9 Եւ զի՞նչ առաւելութիւն է արարողին՝ յորս ինքն ջանայ ։ * 10 Տեսի միանգամայն զզբաղումն . զոր ետ Ա̃ծ որդւոց մարդկան զբաղել 'ի նմա ։ * 11 Զա̃մ ինչ արար Ա̃ծ բարի 'ի ժամանակի իւրում ։ և սակայն զա̃մ յաւի-

‖ Սիր. 8. 1. Առակ. 17. 24.

յաւխտեանսն ետ 'ի սիրտս նոցա։ ո՛չ զի մի՛ գտցէ մարդ զարարածն. զոր արար Ա՟ծ 'ի սկզբանէ մինչև ցկատարած։ 12 * Ծանեայ՝ զի ոչինչ է բարի 'ի նոսա։ բայց ուրախ լինիլ՝ և առնել զբարիս 'ի կեանս իւրում։ 13 * Եւ՛ սակայն ամ՟ մարդ՝ որ ուտէ՝ և ըմպէ. և տեսանէ զբարիս յամ՟ վաստակս իւրում. այն տուրք Ա՟յ են։ 14 * Գիտացի՝ զի զամ՟, զոր արար Ա՟ծ. այնոքիկ կան յաւիտեանս։ 'ի նոսա ոչինչ գոյ յաւելուլ. և 'ի նոցանէ ոչինչ գոյ 'ի բաց բառնալ։ և արար Ա՟ծ. զի երկիցեն յերեսաց նորա։ 15 * Որ լինելոցն էր՝ արդէն իսկ եղև։ և որում լինիլն պարտ էր՝ աչա եղև։ և Ա՟ծ խնդրեսցէ զհալածեալն։

16 * Տեսի 'ի ներքոյ արեգական տեղի դատաստանի՝ և անդ ամպարիշտ։ և տեղի արդարոյ. և անդ բարեպաշտ։ 17 * Եւ՛ ասացի անդ 'ի սրտի իմում. եթէ զարդարն և զամպարիշտն դատէ Ա՟ծ։ վասն զի ժամանակ է ամ՟ իրաց. և 'ի վ՟ր ամ՟ արարածոց՝ ժամ՝ է և ժամանակ։ 18 * Ընդ ասացի 'ի սրտի իմում վ՟ս խօսից որդւոց մարդկան՝ եթէ որոշէ զնոսա Ա՟ծ. և ցուցանէ թէ անասունք են նոքա։ 19 * Եւ՛ նդ սակայն դիպուած է՝ և որդւոց մարդկան։ և դիպուած անասնոց, դիպուած է նոցա։ ո՛չ մահ սորա՝ նոյնպ՟ և մահ նր՟։ և հոգի է յամենեսին՝ և զինչ առաւելու մարդ քան զանասուն՝ և ոչինչ։ վասն զի ամ՟ ինչ ընդունայն է։ 20 * Ամենայն ինչ 'ի մի տեղի երթայ։ ամ՟ ինչ 'ի հողոյ եղև. և ամենայն դառնայ 'ի հող։ 21 * Եւ՛ ո՞վ գիտէ զհոգիս որդւոց մարդկան՝ եթէ ելանէն 'ի վեր. և զշունչ անասնոց՝ եթէ իջանէ յերկիր 'ի խոնարհ։ 22 * Եւ՛ տեսի՝ զի ոչինչ գոյ բարի. բայց ուրախ լինիլ մարդոյ յարարածն իւր։ քանզի այն է բաժին նր՟։ զի ո՞վ ածցէ զնա տեսանել՝ որինչ լինիցին յետ նր՟։

## ԳԼ: Դ:

1 Եւ՛ դարձեալ տեսի զամենայն զամ՟ զրպարտութիւնս՝ որք լինէին ընդ արեգակամբ։ և աչա արտասուք զրպարտելոյն. և ոչ՛ք էր՝ որ մխիթարէր զնո։ և 'ի ձեռս զրպարտչաց նր՟ բռնութի։ 2 * Եւ՛ գովեցի առհասարակ զմեռեալսն. որք յառաջագոյն մեռանն՝ քան զկենդանիս՝ որք կենդանիքն են ինքեանք մինչև ցայժմ։ 3 * Եւ՛ լաւագոյն քան զնոսա զերկոսեան, որ չև ևս է լեալ։ որ ո՛չ ետես զամենայն արարած չար՝ որ արարաւ 'ի ներքոյ արեգական։ 4 * Եւ՛ տեսի զամ՟ վաստակս. և զամ՟ արուեստ արարա

ծոյն։ զի նոյն ինքեան նախանձ առն 'ի մերձաւորէ իւրմէ։ սակայն և այն ունայնութի է և յօժարութի ոգւոյ։ 5 * Անզգամն բուռն էհար զբազկաց իւրոց. և եկեր զմարմինս իւր՝. 6 * Բարի է լիութի բուռն միոյ հանգստեամբ. քան զլիութի երկուց բռանց՝ ջանիւ՛ և յօժարութբ ոգւոյ։ 7 * Դարձայ՝ և տեսի զընդունայնութի 'ի ներքոյ արեգական։ 8 * Օ՜ն մի է. և ո՛չ կրկին. և որդի՝ և եղբայր ո՛չ գոյ նր՟. և ո՛չ է վախճան ամ՟ վաստակոց նորա. և սակայն ական նր՟ ո՛չ յագի մեծութբ։ Եւ՛ արդ՝ ո՞ւմ ջանամ ես. և զրկեմ զանձն իմ՝ 'ի բարութէ։ զի և այն ընդունայնութի է՝ և զբաղումն չար։ 9 * Լաւ են երկու քան զմի. որոց գոն վարձք բարի 'ի վաստակս նոցա։ 10 * Օ՜ն եթէ գլորիցի մին. կանգնեսցէ զնա ընկեր իւր։ և վա՜յ միոյն եթէ գլորիցի. ո՛չ գուցէ միւս՝ որ յարուցանիցէ զնա։ 11 * Օ՜ն եթէ ննջեսցեն երկոքեան՝ ջեռուցանեն զմիմեանս։ իսկ մին՝ զիա՞րդ ջեռնուցու։ 12 * Եւ՛ եթէ բռնասցի մին՝ եր կուքն կալցեն զդէմ նր՟։ և առասան երեքկուսի ո՛չ վաղվաղակի խզեսցի։ 13 * Լաւ է մանուկ աղքատ՝ և իմաստուն՝ քան զթագաւոր ծեր՝ և անմիտ։ որ ո՛չ ևս իմացաւ հայիլ։ 14 * Եթէ 'ի տանէ կապանաց ելցէ այրումն առ 'ի թագաւորել։ զի և 'ի թագաւորութեանն իւրում եղև աղքատ։ 15 * Տեսի զամենայն զամ՟ կենդանիս՝ որք շրջին 'ի ներքոյ արեգական. հանդերձ երիտասարդաւն երկրորդաւ. որ յառնելոցն է փոխանակ նր՟։ 16 * Ո՛չ գոյ վախճան ամ՟ ժողովրդեանն. ամենեցուն որք եղեն յառաջ քան զնա։ Նա և յետինք ո՛չ լինիցին ուրախ 'ի վերայ նորա։ զի և այն ունայն է՝ և յօժարութիւն ոգւոյ։ 17 * Զգո՛յշ լեր ոտին քում. որով երթաս 'ի տուն Ա՟յ։ և մերձ լիցին 'ի լսել։ 18 * Օ՜ն լաւագոյն է հնազանդութիւն քան զտուրս անզգամաց՝ վասն զի ո՛չ են գիտակ բարիս առնելոյ։

## ԳԼ: Ե:

1 Մի՛ փութար բերանով քով. և մի՛ վաղվաղեսցէ սիրտ քո հանել բան առաջի Ա՟յ։ զի Ա՟ծ յերկինս է՝ և դու յերկրի։ վասն այդորիկ եղիցին բանք քո սակաւք։ 2 * Զանզի հասանի երազ՝ 'ի բազմութի փորձութե։ և ձայն անզգամի 'ի բազմութե բանից։ 3 * Որ՟ ուխտես զուխտս քո Ա՟յ. մի՛ յամեր հատուցանել զայն։ վասն զի ո՛չ են կամք յանզգամս։ արդ դու՛ զոր ուխտեսցես հատո։ 4 * Օ՜ն բարի է քեզ ո՛չ

Margin: Տես՚ի ներքոյ արեգական տեղի դատաստանի. || Իւր՝ առէ. || Եւ տեսի զընդունայնութի. || 1 Թագ. 15. 22. Ովսէ. 6. 6.

ոչ ուխտել․ քան ուխտել և ոչ հատուցանել։ * Մի՛ տար զբերան քո առ՚ի մեղանչել մարմնոյդ քում․ և մի՛ ասիցես՝ թէ առաջի երեսաց Ա͞Յ տգիտութիւն է․ զի մի՛ բարկասցի Ա͞Ծ ՚ի վերայ բարբառոյ քոյ․ և ապականեսցէ զգործս ձեռաց քոց։ 5 * Սան զի ըստ յաճախութեանց երազոց՝ է և ընդունայնութիւն բանից բազմաց․ սակայն դու յԱ͞Յ երկի՛ր։ 6 * Եթէ զրպարտութիւն աղքատաց․ և զյափշտակութիւն իրաւանց՝ և զարդարութիւն տեսցես յերկրի․ մի՛ զարմասցիս ՚ի վերայ իրացն, քանզի զբարձունս ՚ի վերայ բարձանց պահէ․ և զբարձրութիւն ՚ի վերայ նոցա․ և զառաւելութիւն երկրի։ 7 * ՚Ի վերայ ա͞մ է թագաւոր անդաստանի գործեցելոյ․ ( և լի՛ջի՛ր դու հաւատարիմ ամենայնի․ ՚ի ծանր յափշտակելոյն։ ) 8 * Որ սիրէ զարծաթ՝ ոչ յագեսցի արծաթով․ և որ սիրեաց զարծաթ ՚ի բազմութեան իւրում զարդիւնս․ սակայն և այն ընդունայնութիւն է։ 9 * ՚Ի բազմութեան արդարութեան յագեցան՝ որք ուտէին զնա․ և զի՞նչ է արութիւն նմա առ՚ի նմանէ․ վ՟զի սկիզբն տեսանելոյ՝ աչք իւր են։ 10 * Քաղցր քուն է ծառայի․ եթէ սակաւ և եթէ շատ կերիցէ․ և որ յագի մեծանալով՝ չէ՛ նմա համարձակ ՚ի քուն մտանել։ 11 * Է հիւանդութիւն զոր տեսի ՚ի ներքոյ արեգական․ մեծութիւն պահեալ մեք՝ առ ՚ի նմանէ չարոյ իւրում։ 12 * Եւ կորիցէ մեծութիւն նր՝ և նա ՚ի զբաղման չարի․ ծնաւ որդի՝ և ոչինչ գոյ ՚ի ձեռին նր։ 13 * Որպէս ո՞ր ել յորովայնէ մօր իւրոյ մերկ․ դարձցի երթալ՝ ո՞ր և եկն․ և զոչինչ առցէ ՚ի վաստակոյն իւրմէ․ եթէ երթայցէ ՚ի ձեռին իւրում։ 14 * Սակայն և այն ախտ չար է․ զի զոր օրինակ եկն՝ նոյնպէս երթիցէ․ և զի՞նչ օգուտ է նմա ՚ի վաստակոյն՝ զոր ջանայ հողմոյ։ 15 * Եւ ա͞մ աւուրք նր ՚ի խաւարի, և ՚ի սուգ․ և սրտմտութեամբ բազմաւ․ հիւանդութեամբ՝ և ցասմամբ։ 16 * Ահա՝ զոր տեսի ես զբարին՝ որ է լաւն․ ուտելն և ըմպելն․ և տեսանել զբարութիւն յա͞մ վաստակսն իւրում․ զոր ջանայ ՚ի ներքոյ արեգական․ ՚ի թի՛ւ աւուրց կենաց իւրոց՝ զոր ետ նմա Ա͞Ծ․ վ՟զի այն է բաժին նր։ 17 * Քանզի ա͞մ մարդ՝ որոյ ետ Ա͞Ծ զմեծութիւն և ինչս․ և իշխան արար զնա ուտել ՚ի նմանէ․ և առնուլ զբաժին իւր, և ուրախ լինել ՚ի վաստակսն իւրում․ այն պարգև Ա͞Յ է։ 18 * Զի ոչ յիշեաց զբազում աւուրց կենաց իւրոց․ զի Ա͞Ծ զբաղեցուցանէ զնա յուրախութեան սրտի իւրոյ։ 19

(Լուսանցքում՝ Յոբ. 1. 21. 1. Տիմ. 6. 7.)

## ԳԼ: Զ:

1 Է չարութիւն զոր տեսի ՚ի ներքոյ արեգական․ և բազում է ՚ի վ՟ր մարդկան։ 2 * Այր մի, որում տացէ Ա͞Ծ զմեծութիւն․ և ինչս՝ և փառս․ և ոչինչ պակաս իցէ անձին իւրում․ յա͞մ որում ցանկանայցէ․ և ոչ տացէ նմա Ա͞Ծ իշխանութիւն ուտել ՚ի նմանէ․ քանզի այր օտար կերիցէ զնա․ և այն ընդունայնութիւն է՝ և ախտ չար։ 3 * Եթէ ծնցի այր հարիւր զաւակ, և ամս բազումս կեցցէ․ և ես բազումս եղիցին աւուրք կենաց նր․ և անձն նր ոչ յագեսցի ՚ի բարութենէ․ և գերեզման ոչ ևս գտցի նմա․ ասացի թէ լաւ է քան զնա վիժածն։ 4 * Զի ունայնութեամբ եկն՝ և խաւարաւ գնաց․ և ՚ի խաւարի անուն նր ծածկեսցի։ 5 * Քանզի զարեգակն ոչ ետես․ և ոչ ծանեաւ՝ զի՞նչ է հանգիստ սորա քան զնորայն։ 6 * Եւ եթէ եկեաց նա զհազար ամաց շրջանակս․ և զբարութիւն ինչ ոչ ետես՝ մի թէ ոչ երթիցէ ա͞մ ՚ի մի տեղի։ 7 * Ա͞մ ջան մարդոյ ՚ի բերան իւր․ և 8 սակայն անձն նր ոչ յագեսցի։ * Վ՟զի զի՞նչ առաւելութիւն է իմաստնոյն քան զանմտին․ քանզի աղքատն գիտէ երթալ առաջի կենաց իւրոց։ 9 * Բարի է տեսիլ աչաց՝ քան զգնացեալն հոգւով․ սակայն և այն ունայն է՝ և յօժարութիւն ոգւոյ։ 10 * Որ ինչ եղեն՝ ահա անդէն կոչեցաւ անուն նր․ և յայտնի եղև՝ որպիսի ինչ է մարդ․ և ոչինչ կարէ դատել ընդ Ա͞Ծ հզօրի քան զինքն։ 11 * Սան զի են բանք բազումք՝ որք յաճախեն զընդունայնութիւն։

## ԳԼ: Է:

1 Զի՞նչ է առաւելութիւն մարդոյ․ քանզի ո՞վ գիտէ՝ զի՞նչ բարի է մարդոյն ՚ի կեանսն իւրում․ ՚ի թի՛ւ աւուրց կենաց ընդունայնութեան նր․ զորս արար ՚ի ստուերի․ վ՟զի ո՞վ պատմեսցէ մարդոյ՝ եթէ զի՞նչ լինիցի նր ՚ի ներքոյ արեգական։ 2 * Բարի է անուն բարի՝ քան զիւղ բարի․ և օր մահուան իւրոյ՝ քան ծննդեան իւրոյ։ 3 * Լաւ է երթալ ՚ի տուն սգոյ՝ քան ՚ի տուն արբեցութեան․ վ՟զի այն է կատարած ա͞մ մարդոյ, և որ կենդանին է՝ տացէ բարիս ՚ի սիրտ իւր։ 4 * Բարի է սրտմտութիւն քան զծաղր․ քանզի չարութեամբ երեսաց զուարճասցի սիրտ։ 5 * Սիրտ իմաստնոց ՚ի տան սգոյ․ և սիրտ անզգամաց ՚ի տան ուրախութեան։ 6 * Լաւ է լսել զսպառնալիս իմաստնոց․ քան լսել մարդոյ զերգս անմտաց։ 7 * Զի ո՞րպէս ձայն փշոյ ՚ի ներքոյ կաթսայի՝ այնպէս է ծաղր անմտաց․ սակայն

(Լուսանցքում՝ Առակ. 22. 1.)

և

և այն սնոտի է ։ 8 *Զի զրպարտութիւն տաճեցուցանէ զիմաստունս ։ և կորուսանէ զսիրտ պնդութեան նր ։ 9 *Լաւ է վախճան բանից՝ քան զսկիզբն իւրց ։ բարի է երկայնամիտ՝ քան զհպարտացեալն ոգւով ։ 10 *Մի փութար յոգի քո բարկանալ ։ վզի բարկութի ՚ի ծոց անզգամաց դադարէ ։ 11 *Մի ասեր թէ զինչ եղև ․ զի աւուրքն առաջինք բարիք էդեն քան զայսոսիկ ։ վզի ոչ իմաստութ հարցեր վս այդորիկ ։ 12 *Լաւ է իմաստութի հանդերձ ժառանգութբ ․ և առաւելութի՝ որոց տեսանեն զարեգակն ։ 13 *Քանզի ընդ հովանեաւ նր է իմաստութի ․ իբրև զհովանի արծաթոյ ։ և առաւելութի գիտութե իմաստութեն կենդանացուսցէ զայն առ ՚ի նմանէ ։ 14 *Տես զարարածս ԱՅ ․ վզի ով կարէ զարդարել զոր ԱԾ եղծցէ ։ 15 *Յաւուր բարութե կեցջիր ՚ի բարիս ․ և տես յաւուր չարութե ։ ահա և այս միաբանի ը այսմ ։ արար ԱԾ զայն վս խօսից ․ զի ոչ գտանիցէ մարդ զկնի իւր՝ և զոչինչ ։ 16 *Զամենայն տեսի զաւուրս ունայնութե իմոյ ։ է արդար կորուսեալ յարդարութե իւրում ․ և է ամպարիշտ՝ որ կայ մնայ ՚ի չարութե իւրում ։ 17 *Մի լինիր կարի արդար՝ և մի առաւել ճարտարեր ։ զի մի երբեք խոտորիցիս ։ 18 *Մի ամպարշտիր յոյժ ․ և մի լինիր խիստ ․ զի մի մեռանիցիս տարաժամ ։ 19 *Լաւ է քեզ՝ եթէ պաշտպանիցիս յայսոսիկ ։ սակայն այսու մի պղծիցես զձեռն քո ։ վզի երկիւղածն յԱյ անցցէ ընդ ամ ։ 20 *Իմաստութի օգնեսցէ իմաստնոյ՝ քան զտասն իշխանս՝ որք իցեն ՚ի քաղաքի ։ 21 *‖ Զի մարդ ոչ գոյ արդար ՚ի վր երկրի ․ որ արասցէ զբարի, և ոչ մեղանչիցէ ։ 22 *Սակայն զամ բանս՝ զորս խօսիցին ամպարիշտք՝ մի դներ ՚ի սրտի քում ։ զի մի լուիցես անէծս ՚ի ծառայէ քումմէ՝ որ զքեզ անիծիցէ ։ 23 *Զի բազում անգամ չարախօսեսցէ զքեզ ։ և ըստ բազում ճանապարհաց չարչարեսցէ զսիրտ քո ․ սակայն դու մի անիծաներ այլոց ։ 24 *Զայս ամ փորձեցի իմաստութբ ․ և ասացի՝ թէ իմաստնացայց ։ և նա հեռացաւ յինէն ։ 25 *Հեռագոյն քան որչափ էրն ։ և խորք խորոց ոչ գտցեն զնա ։ 26 *Շուրջ եկի ես՝ և սիրտ իմ ․ ճանաչել՝ և խորհել՝ և խնդրել զիմաստութի, և զհամար ։ և գիտել զամպարշտի զանզգամութիւն ․ և զլլկանս՝ և զծփանս ։ 27 *Եւ գտի զնա դառնագոյն քան զմահ հանդերձ կնաւն ․ որ է որս՝ և ուռկան սրտի նր ․ և կապանք ՚ի ձեռս նր ։ բարին առաջի երեսաց ԱՅ զերծցի ՚ի նմանէ, և յանցաւորն ըմբռնեսցի ՚ի նմա ։ 28 *Ահա

‖3 Թագ. 8.46. 2. Մնաց. 6.36. Առակ. 20.9. 1. Յովհ. 1. 8.

ձգ

զայս գտի ասէ էկղէսիաստէսն ՚ի միում գտանել զխորհուրդն ։ 29 *Զոր խնդրեաց անձն իմ, և ոչ գտի ․ և այր՝ զմի ՚ի հազարաց գտի ․ բայց զկին ամենեին ոչ ։ 30 *Սակայն զայս ահա գտի ․ զի արար ԱԾ զմարդն ուղիղ ։ և նոքա խնդրեցին զխորհուրդս չարութե ։ ով գիտէ զիմաստունս՝ և ով գիտէ զմեկնութի բանից ։

գի և / գի ‥

## ԳԼ ։ Ը ։

1 Իմաստութի մարդոյ լուսաւոր առնէ զերեսս իւր ։ և լիրբն երեսօք իւրով լինի ատելի ։ 2 *Բերանոյ թագաւորի զգուշ լեր ․ և ՚ի բան երդման մի փութասցիս ։ 3 *Յերեսաց նր գնասցես ։ մի կայցես ՚ի չար բանի ․ զի զամ զոր ինչ կամիցի՝ արասցէ ։ 4 *Եւ իբրև զթագաւոր իշխանութբ խօսի ․ և ով ասասցէ ցնա՝ թէ զինչ առնես ։ 5 *Որ պահէ զպատուիրանն՝ ոչ գիտասցէ զբան չարութե ։ և զժամանակ իրաւանց ճանաչէ սիրտ իմաստնոյ ։ 6 *Զի ամ իրաց է ժամանակ՝ և իրաւունք ։ քանզի տգիտութի մարդոյ բազում է ՚ի վր նր ։ 7 *Զի ոչոք է՝ որ գիտէ՝ եթէ զինչ է՝ որ լինելոց է ։ վզի 8 ոչ լինիցի՝ ով պատմեսցէ նմա ։ *Ոչ է մարդ իշխան ոգւոյ՝ արգելուլ զոգի, և ոչ գոյ իշխանութի նր յաւուր մահու ։ և ոչ գոյ պատգամաւորութի յաւուր պատերազմի ․ և ոչ ապրեցուցանէ ամպարշտութի զմերձաւորն իւր ։ 9 *Եւ զայս ամ տեսի միանգամայն ․ և ետու զսիրտ իմ յամ արարածս ․ որք արարեալ են ՚ի ներքոյ արեգական ։ որոց իշխան եղև մարդն ՚ի վր մարդոյ չարչարել զնա ։ 10 *Եւ յայնժամ տեսի զամբարիշտն ՚ի գերեզմանս ածեալ ։ և ՚ի սրբոցն գնացին՝ և սուգ առին ՚ի քաղաքի ․ վասն զի այնպէս արարին ։ սակայն և այն ընդունայնութի է ։ 11 *Քանզի ոչ գոյ ընդդէմ դառնալ յայնցանէ՝ որք վաղվաղակի գործեն զչար ։ վս այնորիկ համարձակեցան սիրտք որդւոց մարդկան յանձինս իւրեանց առնել զչարիս ։ 12 *Որ մեղաւն, արար զչար ․ յայսմհետէ՝ և ՚ի վաղուց ժամանակաց ։ քանզի գիտեմ և ես՝ զինչ է բարին երկիւղածաց ԱՅ ։ զի երկիցեն յերեսաց նր ։ 13 *Եւ ոչինչ գոյ բարի ամբարշտի ։ և ոչ յերկարեսցէ աւուրս՝ իբրև ը հովանեաւ նր ․ որ ոչ է երկիւղած յերեսացն ԱՅ ։ 14 *Է՝ ընդունայնութի ․ որ եղեալ է ՚ի վր երկրի ։ վզի են արդարք ․ որոց ժամանեն չարիք իբրև զգործս ամպարշտաց ։ և են ամպարիշտք՝ որոց հասանեն այնպէս իբրև զգործս արդարոց ։ ասացի թէ սակայն՝ և այն ընդունայնութի է ։ 15 *Եւ գովեցի միանգամայն զուրախութի ․ վզի

‖ Սէր. 2. 14.

ոչինչ է բարի մարդոյ ՚ի ներքոյ արեգական. բայց ուտելն. և ըմպելն՝ և ուրախ լինելն։ և այն երթայ ընդ նմա ՚ի վաստակս իւրոց յաւուրս կենաց իւրոց։ զորս ետ նմա Աստուած ՚ի ներքոյ արեգական։ 16 *Յոր միանգամ ետու զսիրտ իմ ճանաչել զիմաստութիւն. և տեսանել զզբաղումն. որ եղեալ է ՚ի վերայ երկրի։ զի ՚ի տուէ և ՚ի գիշերի զքուն յաչս նորա ոչ է տեսանել։ 17 *Եւ տեսի զամենայն արարածս Աստուծոյ։ վասն զի ոչ կարասցէ մարդ գտանել ինչ միանգամայն զարարածս նորա։ որք արարեալք են ՚ի ներքոյ արեգական։ Զոր միանգամայն ջանասցէ մարդ խնդրել՝ և ոչ գտցէ։ քանզի որչափ ասասցէ իմաստունն գիտել՝ ոչ կարասցէ գտանել։

## ԳԼ. Թ.

1 Զի զամենայն զայս ետու ՚ի սիրտ իմ։ և սիրտ իմ ետես զայս ամենայն։ վասն զի են արդարք և իմաստունք. և գործք իւրեանց ՚ի ձեռին Աստուծոյ են. քանզի զսէր իսկ՝ և զատելութիւն ոչ գիտէ մարդն։ 2 *Ամենայն ինչ առաջի երեսաց նորա է։ և ընդունայնութիւն է յամենեսեան։ դիպուած է արդարոյն՝ և ամբարշտին. բարւոյն՝ և չարին. սրբոյն՝ և պղծոյն. այնմ, որ զոհիցէ՝ և որ ոչն զոհիցէ։ Որպէս բարին՝ և որպէս յանցաւորն. որպէս որք երդնուցուն՝ և որպէս որք երկնչին յերդմանէ։ 3 *Այս է չար յամենայնի՝ որ արարեալ է ՚ի ներքոյ արեգական։ զի դիպուածք են յամենեսեան։ քանզի սիրտք որդւոց մարդկան լցան չարութեամբ։ և զբաղումն ՚ի սիրտս նոցա ՚ի կեանս իւրեանց։ և զկնի նոցա առ մեռեալս։ 4 *Զի ով են՝ որք հաւատարք են առ ամենայն կենդանիս։ գոյ յոյս, թէ շուն՝ որ կենդանի է՝ լաւ է քան զառիւծ մեռեալ։ 5 *Քանզի կենդանիքն գիտեն՝ թէ մեռանելոց են։ և մեռեալքն ոչ են գիտակք՝ և ոչ իմիք։ և ոչ ևս գոն նոցա վարձք։ զի մոռացաւ յիշատակ նոցա։ 6 *Եւ սէր նոցա՝ և ատելութիւն նոցա։ այլ և նախանձ նոցա յայնմհետէ կորեաւ։ և բաժին իսկ ոչ գոյ նոցա յաւիտեան յամենայնի, որք արարեալք են ՚ի ներքոյ արեգական։ 7 *Եկ՝ կեր ուրախութեամբ զհաց քո։ և արբ սրտիւ զուարթացելով զգինի քո։ զի արդէն իսկ հաճեցաւ Աստուած ՚ի գործս քո։ 8 *Յամենայն ժամանակի եղիցին հանդերձք քո սպիտակք։ և իւղ ՚ի գլխոյ քումմէ մի պակասեսցի։ 9 *Եւ տես ընդ կեանս ընդ կնոջ քոյ՝ զոր սիրեցեր զամենայն աւուրս կենաց ընդունայնութեան քոյ։ որ տուեալ է քեզ ընդ արեգակամբ. մինչև յաւուրս վախճանի քոյ։ զի այն է բաժին քո ՚ի կեանս քում. և ՚ի վաստակոց քոց՝ զորս ջանաս ՚ի ներքոյ արեգական։ 10 *Զամենայն որինչ գտանիցի ՚ի ձեռին քոյ առնել. որքան է զօրութիւն քո՝ արա։ վասն զի ոչ գործ՝ և խորհուրդ՝ և գիտութիւն՝ և իմաստութիւն եղիցին ՚ի դժոխս. յոր դու երթալոց ես։ 11 *Դարձայ՝ և տեսի ՚ի ներքոյ արեգական՝ զի ոչ թեթևաց են ընթացք։ և ոչ զօրաւորաց պատերազմ։ և ոչ իմաստնոց հաց. և ոչ հանճարեղաց մեծութիւն, և ոչ գիտնոց շնորհք։ վասն զի ժամանակք՝ և դիպուածք պատահին ամենեցուն նոցա։ 12 *Քանզի ոչ իսկ գիտաց մարդ զժամանակն իւր. որպէս ձկունք որսացեալք ցանցիւք չարեաց։ և որպէս թռչունք ըմբռնեալք ՚ի ծուղակս։ նոյնպէս անկանին յորոգայթ որդիք մարդկան ՚ի չար ժամանակի. յորժամ յանկարծակի հասանէ ՚ի վերայ նոցա։ 13 *Սակայն և զայս իմաստութիւն տեսի ՚ի ներքոյ արեգական. և է մեծ։ 14 *Քաղաք փոքր՝ և արք ՚ի նմա սակաւք՝ և գայցէ ՚ի վերայ նորա թագաւոր մեծ՝ և պաշարիցէ զնա. և կանգնեսցէ շուրջ պատնէշս մեծամեծս։ 15 *Եւ գտանիցի ՚ի նմա այր աղքատ և իմաստուն՝ և ապրեցուցանիցէ նա զքաղաքն իմաստութեամբ իւրով։ և մարդ ոչ յիշեաց զայրն զայն զտնանկ։ 16 *Եւ ասացի՝ բարի է իմաստութիւն քան զզօրութիւն. և իմաստութիւն աղքատին արհամարհեալ է, և բանք նորա ոչ լինին լսելիք։ 17 *Բանք իմաստնոյն մեղմով լսին՝ քան զաղաղակ իշխանաց անզգամութեամբ։ 18 *Բարի է իմաստութիւն քան զանօթս պատերազմի։ և յանցաւոր մի կորուսանէ զբարութիւն բազում։

## ԳԼ. Ժ.

1 Ճանճք մեռեալք զազրացուցանեն զիւղ անուշունս։ պատուական է սակաւ ինչ իմաստութիւն, քան զմեծ փառս անմտութեան։ 2 *Սիրտ իմաստնոյ յաջակողմն իւր. և սիրտ անմտի ՚ի ձախակողմն իւր։ 3 *Քանզի և ՚ի ճանապարհի յորժամ գնասցէ անմիտն, սիրտ նորա պակասեսցի։ և զորինչ խորհի՝ ամենայն անմտութիւն է։ 4 *Եթէ հոգի իշխանին ելցէ ՚ի վերայ քո՝ մի թողուր զտեղի քո։ զի ողոքումն դարձուցանէ զմեղս մեծամեծս։ 5 *Է չարութիւն զոր տեսի ՚ի ներքոյ արեգական. իբրև ակամայ ինչ ել յերեսաց իշխանի։ 6 *Տուաւ անմիտն ՚ի բարձրութիւնս մեծամեծս. և մեծատունք ՚ի խոնարհութեան նստցին։ 7 *Տեսի զծառայս հեծեալս ՚ի ձիս. և զիշխանս զի գնային իբրև զծառայս յերկրի։ 8 *Որ փորէ զխորխորատ՝ ՚ի նոյն անկցի։ և որ քակէ զցանկ, հարցէ զնա օձ։ 9 *Եւ որ բառնայ զքարինս՝ վտանգեսցի նոքիմբք, և որ հերձանէ զփայտ՝ վշտասցի ՚ի նոսին։

Առակ. 26.27. Սիրաք 27.29.

*Եթէ

*Եթէ անկցի եւ երկաթ. եւ նա տրտմեցոյց զերեսս իւր. եւ զօրութիւնք զօրացուցանեն. եւ է առաւելութիւն քաջ իմաստութեան։ *Եթէ հարցէ օձ 'ի թովելն, ոչ ինչ առաւելութիւն է թովչին։ *Բանք բերանոյ իմաստնոյ շնորհք. եւ շրթունք անզգամի ընկղմեն զնա։ *Սկիզբն բանից բերանոյ նորա անզգամութիւն է. եւ վերջինք բերանոյ նորա յածումն չար։ *Եւ անմիտն բազմացուցանէ զբանս. ոչ գիտէ մարդ զինչ եղեալն է՝ եւ զինչ լինելոց է՝ զի զկնի նորա ո՞վ պատմեսցէ նմա։ *Աշխատութիւն անմտին չարչարէ զնա. որ ոչ գիտայ երթալ 'ի քաղաք։ *Վայ քեզ քաղաք. որոյ թագաւոր քո մանուկ է. եւ իշխանք քո ընդ առաւօտս ուտեն։ *Երանի է քեզ երկիր. որոյ թագաւոր քո որդի ազատի իցէ. եւ իշխանք քո 'ի ժամու ուտեն զօրութեան՝ եւ ոչ ամաչեսցեն։ *Ի վատութեան խոնարհեսցին հեծանձգութիւնք. եւ 'ի դատարկութէ ձեռաց կաթեսցէ տուն։ *Ի ծաղր առնել զհաց՝ եւ զգինի. եւ իւղ ուրախ առնէ զկենդանիս. եւ արծաթոյ լռիցէ ամ ոք։ *Սակայն 'ի միտս քում մի անիծաներ թագաւորի. եւ 'ի շտեմարանս սենեկաց քոց մի նզովեսցես զմեծն. վն զի թռչունք երկնից հասուցանեն զբարբառ քո. եւ որ ունի զթեւս՝ պատմէ զբանս քո։

## Գլ. ԺԱ.

Առաքեա զհաց քո 'ի վերայ երեսաց ջրոյ. զի բազմութեան աւուրց քոց գտցես զնա։ *Տուր զբաժին եօթանց՝ այլ եւ ութից. վն զի ոչ գիտես զինչ լինիցի չար 'ի վր երկրի։ *Թէ լցցին ամպք անձրեւօք, 'ի վր երկրի հեղուն. եւ եթէ անկցի փայտն 'ի հարաւ՝ եւ կամ 'ի կողմն հիւսիսոյ՝ ուր անկցի փայտն, անդ կացցէ։ *Որ խորէ զհողմն՝ ոչ սերմանէ. եւ որ հայի յամպս, ոչ հնձեսցէ։ *Յորս ոչ գոյ գիտութիւն. եթէ զինչ է ճանապարհ հողմոյ. իբրեւ ոսկերք յորովայնի յղւոյ, նոյնպէս ոչ գիտասցես զարարածս այ. զոր ինչ առնիցէ զամ։ *Ընդ առաւօտս սերմանեա զսերմն քո. եւ ընդ երեկոյս մի լքցին ձեռք քո. զի ոչ գիտես՝ եթէ ո՞ր պատահեսցի. այս՝ թէ այն. եթէ երկոքեան 'ի միասին՝ բարիք են։ *Քաղցր է լոյս. եւ բարի աչաց՝ տեսանել զարեգակն։ *Զի եթէ ամս բազումս կեցցէ մարդ. եւ յամ 'ի նս ուրախ լինիցի. եւ յիշեսցէ զաւուրս խաւարի. զի բազումք իցեն. ամ ինչ որ գալոց է, ունայն է։ *Ուրախ լեր երիտասարդ 'ի մանկութեան քում. եւ զուարճացուսցէ զքեզ սիրտ քո յաւուր մանկութեան քոյ. եւ գնա դու 'ի ճանապարհս սրտի քոյ անարատ. եւ 'ի տեսիլ աչաց քոց. եւ ծանիր, եթէ վասն այսր ամենայնի ածցէ զքեզ Այ 'ի դատաստան։ *Ի բաց արա զբարկութիւն 'ի սրտէ քումմէ. եւ հեռացո զչարութիւն 'ի մարմնոյ քումմէ. վասն զի մանկութիւն եւ անմտութիւն, ընդունայնութիւն է։

## Գլ. ԺԲ.

Եւ յիշեա զարարիչն քո՝ յաւուր մանկութեան քոյ. մինչեւ հասեալ իցեն աւուրք չարութեան. եւ ժամանեսցեն ամք, յորս ասասցես, թէ ոչ են կամք իմ 'ի դոսա։ *Մինչեւ խաւարեալ իցէ արեգակն՝ եւ լոյս՝ եւ լուսին՝ եւ աստեղք. եւ դարձցին ամպ զկնի անձրեւաց։ *Յաւուր յորում շարժեսցին պահապանք տանն. եւ թիւրեսցին արք զօրութեանց. եւ դատարկասցին աղօրիք՝ զի նուազեցան. եւ խաւարեսցին՝ որք տեսանեն ընդ ծակս։ *Եւ փակեսցեն զդրունս 'ի հրապարակս 'ի տկարութէ ձայնի աղօրւոյն. եւ յարիցեն 'ի ձայն հաւուն. եւ նկուն եղիցին դստերք երգոյ։ *Եւ 'ի բարձանց տեսցեն. եւ ապշութիւն 'ի ճանապարհին. եւ ծաղկեսցի նշին. եւ թանձրասցի մարախն. եւ տարածեսցի կապարն. վն զի գնայ մարդ 'ի տուն իւր յաւիտենից. եւ շուրջ եղեն 'ի հրապարակս կոծօղք։ *Մինչեւ կործանեալ իցէ լար արծաթոյն. եւ խորտակեալ մանեակ ոսկւոյն. եւ մանրեալ սափորն յաղբիւրն. եւ ընկրկեալ անիւն 'ի գուբն։ *Եւ դարձցի հողն յերկիր՝ ուր եւ էրն. եւ հոգին դարձցի առ Այ, որ ետ զնա։ *Ունայնութիւն ունայնութեանց ասաց ժողովողն. ամ ինչ ունայն եւ աւելորդ է։ *Զի եւ եղեւ ժողովողն իմաստուն. եւ զի ուսոյց զգիտութիւն ամ մարդոյ. եւ ունկն քննէ զզարդ առակաց։ *Յոյժ խնդրեաց ժողովողն գտանել զբանս կամաց. եւ գրեալ զուղղութիւն բանից ճշմարտութեան։ *Բանք իմաստնոց իբրեւ զխթանս եզանց. եւ իբրեւ բեւեռք հրացեալք. որք տուեալ 'ի նշանակացն 'ի հովուէ միջէ։ *Եւ աւելորդ 'ի նոցանէ. որդեակ՝ զգոյշ լեր 'ի տանելոյ զգիրս բազումս՝ զի ոչ գոյ վախճան. եւ խորհուրդք բազումք՝ եւ ջան մարդոյ։ *Եւ վախճան բանիցս զամենայն ինչ լուր. յԱյ երկիր՝ եւ զպատուիրանս նր պահեա. վն զի այս է ամ մարդ։ *Բանզի զամ արարածս ածցէ Այ 'ի դատաստան. յամենայն անտես արարելոց եթէ բարի՝ եւ եթէ չար։

# ԵՐԳ ԵՐԳՈՑ ՍԱՂՈՄՈՆԻ· ՈՐ Է ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՕՐՀՆՈՒԹԵԱՆՑ· ՈՐ ԵԲՐԱՅԵՑԵՐԷՆ ԱՍԻ ՍԻՐ ՀԱ ՍԻՐԻՄ·

## Գլուխ Առաջներորդ։

Հարսն ասէ։

1 ԱՄԲՈՒՐՐԵՍՑԷ ԶԻՍ 'ի համբուրից բերանոյ իւրոյ։ վասնզի բարի են ստինք քո քան զգինի։ 2 *Եւ հոտ իւղոյ քոյ քան զամենայն խունկս։ իւղ թափեալ է անուն քո· վասն այնորիկ օրիորդք սիրեցին զքեզ։ 3 *Եւ ձգեցին զքեզ՝ զհետ քո 'ի հոտ իւղոյ քոյ ընթասցուք։ Օրիորդացն պատմէ հարսն վասն փեսային՝ զոր ինչ շնորհեաց նմա։ Տարաւ զիս արքայ 'ի սենեակ իւր։ Հարսին պատմեալ Օրիորդացն. Նոքա ասեն։ Ցնծասցուք և ուրախ լիցուք 'ի քեզ։ սիրեսցուք զստինս քո քան զգինի։ Օրիորդքն փեսային բարբառին զանուն հարսինն։ Ուղղութիւն սիրեաց զքեզ։ Հարսն ասէ։ 4 *Սեաւ եմ ես և գեղեցիկ դստերք Եղմի· իբրև զվրանս կեդարու· և իբրև զխորանս սաղոմոնի։ 5 *Մի՛ հայիք յիս· զի ես եմ սևացեալ։ վասնզի խեթիւ հայեցաւ յիս արեգակն։ որդիք մօր իմոյ մարտեան ընդ իս· և եդին զիս պահապան այգեստանի· զի զայգին իմ ոչ պահեցի։ Ցփեսայն հարսն ասէ։ 6 *Պատմեա՛ ինձ· զոր սիրեաց անձն իմ։ ո՞ւր հովուես· ո՞ւր հանգուցանես 'ի միջօրէի։ մի՛ գուցէ լինիցիմ իբրև զընկեցեալն 'ի հօտս ընկերաց քոց։ Փեսայն ցհարսն ասէ։ 7 *Եթէ ոչ ճանիցես զանձն քո գեղեցիկդ 'ի կանայս։ ել դու զհետ դարշապարաց հօտից, և արածեա՛ զուլս քո 'ի վրանս հովուաց։ Դարձեալ փեսայն ասէ։ 8 *Ձիոյն իմոյ 'ի կառսն փարաւոնի նմանեցուցի զքեզ մերձաւոր իմ։ Օրիորդքն ցհարսն ասեն։ 9 *Ըստ զի գեղեցկացան ծնօտք քո իբրև զտատրակի։ պարանոց քո իբրև զմանեակ։ 10 *Նմանութիւն ոսկւոյ արասցուք զքեզ՝ հանդերձ կիտուածովք արծաթոյ։ 11 *Մինչև արքայ 'ի գիրկս իւր ընկալցի զքեզ։ Հարսն ցէտր անձն. եւ ցփեսայն ասէ։ Նարդոս իմ բուրեաց զհոտ իւր։ 12 *Ծրարս ստաշխին եղբօրորդին իմ ինձ։ 'ի մէջ ստեանց իմոց հանգիցէ։ 13 *Ողկոյզ ծաղկեալ եղբօր որդին իմ ինձ։ 'ի մէջ այգեստանեացն ենգադդայ։ Փեսայն ցհարսն ասէ։ 14 *Ահաւասիկ ես գեղեցիկ մերձաւոր իմ։ Ահաւասիկ ես գեղեցիկ· աչք քո աղաւնւոյ։ 15 Հարսն ցփեսայն ասէ։ *Ահաւադիկ ես գեղեցիկ եղբօրորդի իմ, և վայելուչ առ դահոյսն մեր հովանաւորք։ 16 *Գերանք տանց մերոց մայրք։ դարաւանդք մեր նոճիք։

## Գլ. Բ.

1 Փեսայն ցհարսն յաղագս անձին խօսի ասէ։

Ես ծաղիկ դաշտաց՝ և շուշան հովտաց։ 2 *Իբրև շուշան 'ի մէջ փշոց· այնպէս է քոյր իմ 'ի մէջ դստերաց։ 3 Հարսն ցփեսայն ասէ։ *Իբրև խնձոր 'ի փայտս անտառի, այնպէս է եղբօրորդին իմ 'ի մէջ ուստերաց։ ընդ հովանեաւ նորա փափագեցի՝ և նստայ։ և պտուղ նո՛րա քաղցր է 'ի կոկորդի իմում։ 4 Ցօրիորդսն հարսն ասէ։ *Մուծէ՛ք զիս 'ի տուն գինւոյ։ կարգեցէ՛ք 'ի վերայ իմ զսէր։

զսէր։ *Հաստատեցէք զիս իւղովք ։ 5 հաւաքեցէք յիս խնձորս ։ վ̃զի խանդակաթ եմ ես սիրով ։ *Ահեակ նորա 6 'ի վերայ գլխոյ իմոյ ։ եւ աջ նորա պատեսցի զինեւ ։ Հարսն յօրհորդսն ասէ ։

[margin: 'ի Ներքոյ գլխոյ]

* Երդմնեցուցանեմ զձեզ դստերք 7 Եէ̃մի 'ի զօրութիւնս եւ յուժգնութիւնս անդաստանի ։ եթէ յարուցանիցէք , զարթուսջիք զսէրն՝ մինչեւ կամեսցի ։

Լռեալ դշխոյն Փեսայէն ասէ ։ *Ձայն եղ_ 8 բօր որդւոյ իմոյ ։ ահաւասիկ սա եկն վազելով 'ի վերայ լերանց՝ խայտալով 'ի վերայ բլրոց ։ *Նման է եղբօր որ_ 9 դին իմ այծեման . կամ որթուց եղանց 'ի վերայ լերանց բեթելայ ։ Հարսն նշանտայ Օրհորդայն զՓեսայէն, եւ ասէ ։ Ահաւասիկ սա եկաց յետուստ որմոյն մերոյ ։ յառեալ ը̃ պատուհանսն . հայեցեալ ընդ վանդակապատսն ։ *Պատասխանի 10 տայ եղբօրորդին իմ ինձ՝ եւ ասէ ։ արի , եկ՝ մերձաւոր իմ . գեղեցիկ իմ . աղաւնի իմ ։ *Վասն զի ահա ձմեռն 11 եանց ։ անձրեւք անցին , եւ գնացեալ մեկնեցան ։ *Ծաղիկք երեւեցան յերկ 12 րի ։ ժամանակ յատանելոյ եհաս ։ ձայն տատրակի լսելի եղեւ յերկրի մերում ։ * Թզենի ընձիւղեաց զբողբոջ իւր ։ 13 այգիք մեր ծաղկեցան՝ եւ ետուն ըզ հոտս իւրեանց ։ արի . եկ՝ մերձաւոր իմ . գեղեցիկ իմ ։ *Աղաւնի իմ . եկ 14 ընդ հովանեաւ վիմին . մերձ առ նախապարիսպն ։ ցոյց զդէմս քո . եւ լսելի արա ինձ զբարբառ քո ։ վ̃զի ձայն քո քաղցր է՝ եւ դէմք քո գեղեցիկ ։

Յօրհորդսն Փեսայն ասէ ։ *Կալարուք մեզ 15 աղուէսունս փոքունս . զապականիչս այգեաց ։ եւ այգիք մեր ծաղկեսցին ։

Հարսն ասէ ։ *Եղբօր որդին իմ ինձ՝ եւ 16 ես նմա ։ որ հովուէն 'ի մէջ շուշանաց ։ *Մինչեւ տիւն շնչեսցէ . եւ շարժեսցին 17 ստուերք ։ դարձի՛ր՝ նմանեա՛ց եղբօրորդի իմ այծեման ։ կամ որթուց եղանց 'ի վերայ լերանց խնկաբերաց ։

ԳԼ։ Գ։

Յանկողնի իմում 'ի գիշերի խնդրեցի , 1 զոր սիրեաց անձն իմ . խնդրեցի զնա՝ եւ ոչ գտի ։ կոչեցի զնա՝ եւ ոչ ետ ինձ զձայն ։ *Յարեայց՝ եւ շրջեցայց 2 ը̃ քաղաքն 'ի փողոցս եւ 'ի հրապարակս՝ եւ խնդրեցից՝ զոր սիրեաց անձն իմ ։ խնդրեցի զնա՝ եւ ոչ գտի ։ կոչեցի զնա՝ եւ ոչ ետ ինձ զձայն ։ *Գտին զիս պա_ 3 հապանքն . որք շրջէին ընդ քաղաքն ։

[margin: Հարսն ցպահապանսն]

Փեսայն ցպահապանսն քաղաքին ասէ ։

Միթէ՝ զոր սիրեաց անձն իմ տեսէք ։ *Իբրեւ փոքր ինչ անցի ընդ նո̃ . 4 գտի զոր սիրեաց անձն իմ ։ Գտեալ զՓեսայն ասէ հարսն ։ Կալայ զնա . եւ ոչ թողից զնա՝ մինչեւ տարայց զնա 'ի տուն մօր իմոյ . եւ 'ի սենեակ յղացելոյն զիս ։

Օրհորդսն երդմնեցուցանէ երէ 5 բորդ անգամ հարսն՝ եւ ասէ ։ * Երդմնեցուցանեմ զձեզ դստերք Եէ̃մի 'ի զօրութ՟իս եւ յուժգնութ՟իս անդաստանի ։ եթէ յարուցանիցէք, զարթուսջիք զսէրն, մինչեւ կամեսցի ։

Փեսայն Հասն հարսին ասէ ։

6 *Ո՞վ է սա՝ որ ելանէ յանապատէ՝ իբրեւ զտեղն ծխոյ խնկեալ ։ զմուռս եւ կնդրուկ յա̃մ փոշեաց իւղեփեցաց ։

7 Օրհորդքն ասայէն զայս ինչ ։ *Ահա գահոյք սողոմոնի վաթսուն զօրաւորք շուրջ զնովաւ 'ի զօրաւորացն ի̃ղի ։ 8 *Ամենեքեան ունին զսուր՝ ուսեալք զպատերազմ ։ այր իւրաքանչիւր զսուր իւր 'ի վ̃ր ազդեր իւրոյ 'ի զարհուրա_ 9 նաց գիշերոյ ։ * Գահաւորակ արար իւր արքայ սողոմոն 'ի փայտից լիբա 10 նանու ։ * Զսիւնսն արար արծաթեղէնս ։ եւ զանարսն ոսկեղէնս ։ եւ զխարիսխն ծիրանի ։ եւ զմէջն ականակապ տարածեալ զսէր 'ի դստերացն Եէ̃մի ։ 11 *Ելէք՝ եւ տեսէք դստերք սիոնի յարքայն սողոմոն զպսակն . որով պսակեաց զնա մայր իւր յաւուր փեսայութե̃ իւրոյ . եւ յաւուր ուրախութե̃ սրտի նր ։ Փեսայն ընդ հարսն ասէ ։

ԳԼ։ Դ։

1 Ահա ես գեղեցիկ մերձաւոր իմ ։ Ահա ես գեղեցիկ՝ աչք քո աղաւնւոյ բաց 'ի լռութէդ քումմէ ։ վարսք քո իբրեւ զհօտս այծից . որք երեւե_ 2 ցան 'ի գաղաադէ ։ * Ատամունք քո իբրեւ զերամակս կտրելոց ։ որք ելանեն 'ի լուացաց ։ ամենեքեան երկուո 3 րիք՝ եւ անորդի ոչ գոյ 'ի նոսա ։ *Իբրեւ լար կարմիր՝ են շրթունք քո ։ եւ խօսք քո գեղեցիկք ։ իբրեւ կեղեւ նռան այտք 4 քո՝ բաց 'ի լռութէդ քումմէ ։ *Իբրեւ զաշտարակն դաւթի պարանոցք քո ։ որ շինեալ է 'ի թալպիօթ ։ հազար վահան կախեալ են 'ի նմա . եւ ա̃մ նետք զօրաւ 5 որաց ։ * Երկու ստինք քո իբրեւ զերկուս ուլս այծեման . որք արածին 'ի 6 շուշանս ։ *Մինչեւ տիւն ծագեսցի . եւ ստուերքն շարժեսցին ։ գնացից ես առանձինն 'ի լեառն զմռսոյ՝ եւ 'ի բլուր 7 կնդրկի ։ *Ամենեւին գեղեցիկ ես մերձաւոր իմ . եւ արատ ինչ ոչ գոյ 'ի քեզ ։ 8 *Եկ 'ի լիբանանէ հարսն . եկ 'ի լիբանանէ ։ եկեսցես՝ եւ անցցես 'ի սկզբան հաւատոյ՝ 'ի գլխոյ սանիրայ եւ հերմոնի ։ 'ի մորեաց առիւծուց . եւ 'ի լերանց 9 ընձուց ։ * Սրտացուցեր զմեզ քո՛յր իմ հարսն . սրտացուցեր զմեզ միովակամբ քով .

քով . և միով քառամանեկաւ պարանո
ցի քոյ ։ * 10 Զի գեղեցկացան ստինք քո
քոյր իմ հարսն . զի գեղեցկացան ստինք
քո 'ի գինւոյ ։ և հոտ հանդերձից քոց
քան զամ խունկս ։ * 11 Մեղր կաթեցու
ցանեն շրթունք քո՝ քոյր իմ հարսն ։
մեղր՝ և կաթն 'ի ներքոյ լեզուի քոյ .
և հոտ հանդերձից քոց իբրև զհոտ
կնդրկի ։ * 12 Պարտէզ փակեալ քոյր իմ
հարսն ։ պարտէզ փակեալ և աղբիւր
կնքեալ ։ * 13 Առաքումն քո դրախտ նռ_
նենեաց հանդերձ պտղօք ծառոց՝ ծա
ղիկ հանդերձ նարդոսիւ ։ * 14 Նարդոս՝
և քրքում ։ եղէգն՝ և կինամոմոն . հան
դերձ ամենայն փայտիւք լիբանանու ։
զմուռս և հալուէ . հանդերձ ամ ա_
ռաջնովք իւղովքն ։ * 15 Աղբիւր պար_
տիզաց՝ ջրհոր ջրոյ կենդանւոյ՝ հոսե_
ցելոյ 'ի լիբանանէ ։ Հարսն ասէ ։ * 16 Արի
հիւսիս . և եկ հարաւ . շնչեա՛ 'ի պար_
տէզ իմ . և բուրեսցին խունկք իմ ։

## Գլ ։ Ե ։

Հարսն աղաչէ զփեսայն՝ և ասէ ։

1 Իջցէ եղբօր որդին իմ 'ի պարտէզ
իւր ։ և կերիցէ զպտուղս ծառոց
իւրոց ։ Փեսայն ցհարսն ասէ ։ Մտի 'ի
պարտէզ իմ հարսն ։ կթեցի զմուռս
հանդերձ խնկօք իմովք ։ կերի զհաց
իմ մեղու իմով ։ արբի զգինի իմ կա
թամբ իմով ։ Կերայք մերձաւորք իմ .
և արբէք ։ արբեցարո՛ւք եղբօրոր_
դեակք իմ ։ * 2 Ես ննջեմ . և սիրտ իմ
արթուն կայ ։ Հարսն զփայ զփեսայէն բաղ
խել զդուռն ։ Ձայն եղբօրորդւոյ իմոյ
բաղխէ զդուռն ։ Փեսայն յայնէ հարսին ։
Բա՛ց ինձ քոյր իմ . մերձաւոր իմ . ա_
ղաւնի իմ . կատարեալ իմ ։ վասն զի
գլուխ իմ լցաւ ցօղով ։ և վարսք իմ
տարափով գիշերոյ ։ Հարսն ասէ ։
* 3 Մերկացայ զպատմուճան իմ . զի_
արդ զգեցայց զնա ։ լուացի զոտս իմ .
զիարդ աղտեղեցից զնո ։ * 4 Եղբօրոր
դի իմ յառեաց զձեռն իւր ընդ ծա_
կոյկն . և որովայն իմ խռովեցաւ 'ի նա ։
* 5 Յարեայ ես 'ի բանալ եղբօրորդւոյ
իմոյ ։ Ձեռք իմ կաթեցուցին զմուռս .
և մատունք իմ լցան զմռսով ։ * 6 Ի վ՛ր
դրացն փականակին ։ բացի եղբօրորդ
ւոյ իմոյ ։ եղբօրորդին իմ էանց՝ և հո
գի իմ ել ընդ բանի նորա ։ խնդրեցի
զնա՝ և ոչ գտի ։ կոչեցի զնա՝ և ոչ լուե
աւ ինձ ։ * 7 Գտին զիս պահապանքն՝
որք շրջէին 'ի քաղաքին ։ հարին՝ և վի
րաւորեցին զիս . առին զխլայն իմ յի_
նէն պահապանք պարսպաց ։ * 8 Երդ_
մնեցուցանեմ զձեզ դստերք Եր՛մի՝ 'ի
զօրութիւն և յուժգնութիւն անդաստա_
նի ։ եթէ գտանիցէք զեղբօրորդին իմ,
պատմեսջիք նմա . եթէ խանդակաթ
եմ 'ի սէր քո ։ Դստերք Եէմ . և պահա_
պանք պարսպացն հարցանեն զհարսն ։
9 * Զի՞նչ է եղբօրորդին քո յեղբօրոր
դիս՝ գեղեցիկդ 'ի կանայս ։ զի՞նչ է եղ
բօրորդին քո յեղբօրորդեաց . զի այդ_
պէս երդմնեցուցանես զմեզ ։ Հարսն
նշան տայ զեղբօրորդւոյն՝ զինչ ոք էր . և նա
10 ասէ ։ * Եղբօրորդին իմ սպիտակ է՝ և
կարմիր՝ ընտրեալ 'ի բիւրուց ։
11 * Գլուխ նորա յոսկւոյ կեփազեայ . վարսք
նորա կուածոյք սեաւ իբրև զագռաւ ։
12 * Աչք նորա իբրև զաղաւնիս լուացեալ
կաթամբ . նստեալ 'ի լի՛ լիութե՛ ջուրց ։
13 * Ծնօտք նորա իբրև զտաշտս խնկոց
իւղեփեցաց բուրեալք զանուշահոտու
թիւն ։ շրթունք նորա շուշանք՝ բղխեն
14 զմուռս լիութե՛ ։ * Ձեռք նորա ձախարա
կեալք ոսկեղէնք . լցեալ ակամբք
թարսսայ ։ որովայն նորա տախտակ
փղոսկրեայ ականակապ՝ 'ի քարանց
15 շափիղայ ։ * Սրունք նորա սիւնք կճեայք ։
հաստատեալք 'ի վերայ ոսկի խարս_
խաց ։ տեսակ նորա որպ՛ լիբանան . ընտ
16 րեալ իբրև զմայրս ։ * Կոկորդ նորա լի
քաղցրութ՛ ։ և ամենևին ցանկալի ։
այն է եղբօրորդին իմ . և այն մերձաւ
որ իմ դստերք Եէմի ։ Հարցանեն դստերքն
17 Եէմ՝ ուր էանց եղբօրորդի նորա ։ * Ու՞ր
գնաց եղբօրորդին քո գեղեցիկդ 'ի կա
նայս . ու՞ր դիտեաց եղբօրորդին քո՝ և
խնդրեսցուք զնա ընդ քեզ ։

## Գլ ։ Զ ։

Պատասխանի տուեալ ասէ ։

1 Եղբօրորդին իմ էջ 'ի պարտէզ
իւր 'ի տաշտս խնկոց ։ հովուել 'ի
բուրաստանս՝ և ժողովել զշուշանս ։
2 * Ես եղբօրորդւոյ իմոյ՝ և եղբօրոր_
դին իմ ինձ . որ հովուէ՛ն 'ի մէջ շուշա
3 նաց ։ Փեսայն ընդ հարսն ասէ ։ * Գեղե_
ցիկ ես մերձաւոր իմ . իբրև զանուշա_
հոտութ՛ի . գեղեցիկ ես իբրև զԵէմ .
4 ահ հիացումն կարգեալ ։ * Դարձո՛ զաչս
քո առաջի իմ . վ՛զի դոքա ընդոստու
ցին զիս ։ վարսք քո իբրև զերամակս
այծից՝ որք երևեցան 'ի գաղաադէ ։
5 * Ատամունք քո իբրև զերամակս կտ
րելոց . որք ելանեն 'ի լուացեաց ։ ամե_
նեքեան երկուորիք են . և ամորձի ոչ
6 գոյ 'ի նոսա ։ * Իբրև զլար կարմիր՝ են
շրթունք քո ։ և խօսք քո գեղեցիկք ։
իբրև զկեղև նռան այտք քո՝ բաց 'ի
7 լռութե՛դ քումմէ ։ * Վաթսուն են թա
գուհիք . և ութսուն հարճք . և օրի_
որդք

որդք՝ որոց ո՛չ գոյ թիւ: *Մի է աղաւնի իմ. կատարեալ իմ. մի է մօր իւրոյ՝ ընտրեալ ծնողին իւրոյ: տեսին զնա դստերք՝ և երանեցին նմա: Թագուհիք՝ և հարճք գովեցին զնա: Դստերքն Երուսաղեմի տեսին զնա, և երանեցին նմա: 8

*Ո՞վ է սա՝ որ երևեալս է իբրև զառաւօտ. գեղեցիկ ո՛րպէս զլուսին. ընտիր իբրև զարեգակն. իբրև զհիացումն կարգեալ: Փեսայն ընդ հարսն ասէ: 9

*Ի պարտէզս ընկուզաց իջի հայել՚ի յարմտիս ուղխից. տեսանել թէ ծաղկեալ իցէ որթն. թէ ծաղկեալք իցեն նռնենիք: Հարսն ցփեսայն ասէ: 10 *Անդ տաց քեզ զստինս իմ, ո՛չ գիտաց անձն իմ: եդ զիս իբրև զկառսն ամինադաբայ: Դստերքն Երուսաղեմի ցհարսն ասեն: 11

*Դարձիր՝ դարձիր սունամացիդ. դարձիր՝ դարձիր՝ և տեսցուք՚ի քեզ: 12

## Գլ: Է:

Դստերքն՝ Երուսաղեմի ցփեսայն ասեն:

Զի՞նչ տեսանիցէք՚ի սունամացիդ. որ եկեալ է իբրև զպարս բանակաց: զի գեղեցկացան գնացք քո կօշկօք դուստր Նադաբայ: յարմարումն բարձից քոց նմանութիւն ուլանց յեռելոց՝ գործոց ձեռաց արուեստաւորի: 1 *Պորտ քո թակոյկ ճախարակեալ: ո՛չ նուազեալ՚ի գինւոյ խառնելոյ: որովայն քո՝ որպէս զշեղջ ցորենոյ փակեալ շուշանաւ: 2 *Երկու ստինք քո՝ իբրև երկուս ուլս երկուորիս այծեմանս: 3 *Պարանոց քո՝ իբրև զաշտարակ փղոսկրեայ: աչք քո իբրև զծովս եսեբոնի՚ի դրունս դստերաց բազմաց: ռնգունք քո իբրև զաշտարակն լիբանանու. որ դիտէ՚ի դէմս դամասկոսի: 4 *Գլուխ քո՚ի վերայ քո իբրև զկարմեղոս: հիւսք գլխոյ քո որպէս ծիրանի թագաւորի: թագ՚ի գլուխ յընթացս ապարիզաց: 5 *Զի՞նչ գեղեցկացար՝ և զի՞ հեշտալի եղեր: սէր՚ի փափկութեան քում: 6 *Նմանեցաւ մեծութիւն քո արմաւենւոյ. և ստինք քո ողկուզաց: 7 *Ասացի՝ ելից՚ի վերայ արմաւենւոյն՝ կալայց զբարձրութենէ նորա. և եղիցին ստինք քո իբրև զողկոյզ որթոյ: և հոտ ռնգաց քոց իբրև զխնծոր: 8 *Եւ կոկորդ քո իբրև զգինի անուշ: երթալ ընդ եղբօրորդւոյ իմոյ յուղղութիւն: բաւական լեալ շրթամբք իմովք՝ և ատամամբք: 9 *Ես եղբօրորդւոյ իմոյ՝ և առ իս դարձ նորա: 10 *Եկ եղբօրորդի իմ, ելցուք յանդաստան. հանգիցուք՚ի գեօղս: 11 *Կանխեսցուք յայգիս. տեսցուք՝ թէ ծաղկեալ իցէ որթն՝ ծաղկեալ իցէ նուռն: ծաղկեալք իցեն նռնենիք: անդ տաց զստինս իմ քեզ: 12 *Մանրագորք ետուն զհոտս իւրեանց: առ դուրս մեր ամ մրգաբերք: նոր առ հնոյն. զոր ես ինձ մայր իմ. պահեցի քեզ եղբօրորդի իմ: 13

## Գլ: Ը:

1 Ո՞վ տացէ քեզ եղբօրորդի իմ, դիել զստինս մօր իմոյ: գտեալ զքեզ արտաքոյ՝ համբուրեցից՝ և ո՛չ անգոսնեսցես զիս: 2 *Առեալ ածից զքեզ՚ի տուն մօր իմոյ՝ և՚ի սենեակ յղացելոյն զիս. արբուցից քեզ՚ի գինւոյ խղագործաց. յօշարակէ նռնենեաց իմոց: 3 *Ահեակ նորա ընդ գլխով իմով. 4 և աջ նորա պատեսցէ զինև: *Երդմնեցուցանեմ՝ զձեզ դստերք Երուսաղեմի՚ի զօրութիւն՝ և յուժգնութիւն անդաստանի: եթէ յառնիցէք՝ զարթուսջիք զսէրն՝ մինչև կամեսցի: Դստերքն Երուսաղեմի ցփեսայն ասեն: 5 *Ո՞վ է սա՝ որ ելանէ սպիտակացեալ. յեցեալ յեղբօրորդին իւր: Փեսայն ցհարսն ասէ: Ընդերքոյ խնձորոյ զարթուցից զքեզ: անդ երկնեաց զքեզ մայր քո. անդ երկնեաց՝ 6 որ ծնաւ զքեզ: *Դիր զիս իբրև զկնիք՚ի վերայ սրտի քոյ. իբրև զմատանի՚ի վերայ բազկի քոյ: վասն զի հզօր է իբրև զմահ սէր. և խիստ իբրև զդժոխս նախանձ. թևք նորա իբրև զթև բոցոյ՝ և 7 հրոյ: *Ջուրք բազումք ո՛չ կարեն շիջուցանել զսէր. և գետք՝ ո՛չ արգելցեն զնա: եթէ տայցէ այր զամենայն զկեանս իւր՚ի սէր: արհամարհանօք անարգանեսցեն 8 զնա: Եղբարքն ասեն: *Քոյր մեր փոքր՝ և ստինս ո՛չ ունի: զի՞նչ արասցուք քեռ մերում. յաւուր յորում՝ պատմեսցի 9 նմա: *Եթէ պարիսպ իցէ՝ շինեսցուք՚ի վերայ նորա մարտկոցս արծաթեղէնս: եթէ դուռն իցէ՝ յօրինեսցուք՚ի նմա տախտակս մայրս: Հարսն համարձակ 10 ասէ: *Ես պարիսպ՝ և ստինք իմ իբրև զաշտարակ: ես յաչս նորա իբրև գտեալ 11 խաղաղութիւն: *Այգի եղև սողոմոնի՚ի բեէղմաւոն. ետ զայգին իւր ցպահապանսն: բերցէ այր իւրաքանչիւր՚ի պտղոյ նորա հազարս արծաթոյ: 12 *Այգի իմ ինձ առաջի իմ: հազարք սողոմոնի. և երկերիւրք՝ որոց պահեն 13 զպտուղ նորա: Հարսն ասէ: *Որ նստիս՚ի պարտէզս՝ այլք անսան քեզ: զձայն 14 քո լսելի արա ինձ: *Փախիր եղբօրորդի իմ. և նմանեաց այծեմանց. կամ որթուց եղանց՚ի վերայ լերանց խնկաբերաց:

Աղօթս գտեալ բանս այս իմաստնոյն:
Օրհնութիւն եւ Խոստովանութիւն ասէ:

Բարձրասցի Թագաւոր մեր՝ յրջանս մարմնոյս եւ 'ի գահոյս մեր: իբրեւ արմաւ ոսկեղէն զմուսալից լցցէն տաշտք մեր: Բարձցի Թագաւոր անդրէն 'ի մանկութիւն: Սիրելին 'ի սենեակս մեր՝ երգեսցուք զսէր: փեսայն ասէ: Ես իսկ եմ երգ սաղմոսարանի: երգեցից ընդ ընկերս իմ: երգեսցուք՝ եւ ուրախ լիցուք: Հարսն եւ դստերքն. եւ օրհնութիւն ասեն: Թագաւոր սիրելի. թէ պէտ եւ ծածկեցաք 'ի տեսլենէ՝ աչք մեր յիմնաւորք: Տէր արար զքեզ: հաստատեաց զքեզ: պատրաստեաց զքեզ յարգանդէ: Գեղեցիկդ 'ի կանայս. մայր քո ծնցի մարմին անարխեղծ: Եւ նոյն՝ յայնմանէ տանջութէ. զի այսպէս ունէր:

# ԳԻՐՔ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՆ

## Գլուխ Առաջներորդ:

1 ՍԻՐԵՑԷՔ ԶԱՐդարութիւն ոյք դատէք զերկիր: խորհեցարուք ըզՏէ բարութեամբ եւ միամտութեամբ սրտի խնդրեցէք զնա: 2 Զի գտանի այնոցիկ՝ որք ոչ փորձեն զնա: եւ երեւի, որոց ոչ թերահաւատեն 'ի նմանէ: 3 Զի խորհուրդք թիւրք անջատեն յԱյ: եւ զօրութիւն փորձ՝ յանդիմանէ զանզգամս: 4 Զի յանձն չարարուեստ իմաստութիւն ոչ մտանէ. եւ ոչ բնակի 'ի մարմնի վարեցելոյ մեղօք: 5 Զի Սբ Հոգին իմաստութեան՝ փախիցէ 'ի նենգութենէ: եւ հեռասցի 'ի խորհրդոց անմտաց: եւ յանդիմանեսցէ՝ 'ի հասանել 'ի վ՛ր անիրաւութեանց: 6 Զի մարդասէր Հոգին իմաստութեան՝ ոչ արդարացուցանէ զհայհոյիչն 'ի շրթանց իւրեանց: զի երիկամանց նորա է Այ վկայ. եւ սրտի նորա ստուգիչ ճշմարիտ: եւ լեզուի նորա ունկնդիր: 7 Զի Հոգի Տն ելից զտիեզերս: եւ որ ունի զամ. ունի զգիտութիւն բարբառոյ: 8 Վա այնորիկ՝ որք շշնջեն զանիրաւս՝ ոչ ծածկեսցին: եւ ոչ իրաւունք առ նովաւ ա_ ռանց կշտամբութեանց անցցեն: 9 Զի խորհրդոց ամբարշտաց հարց եւ փորձ եղիցի. եւ բանից նոցա լուր առ Այ հասանիցի: զի կշտամբութիւն անօրէ_ նութեանց նց է: 10 Զի ունկն նախանձաւորութեան լսէ զամ: եւ շշնջիւն քրթմնջմանց ոչ ծածկի: 11 Արդ զգուշ լերուք յանօգուտ քրթմնջենէ: եւ 'ի բամբասանաց խնայեցէք զլեզու: զի շշնջիւն գաղտնի՝ դատարկ ոչ անցցէ. եւ բերան ստախօս սպանանէ զանձն: 12 Մի՛ ցանկայք մահու՝ մոլորութբ կենաց ձերոց: եւ մի՛ ձգէք յանձինս զսատակումն գործովք ձեռաց ձերոց: 13 Զի Այ զմահ ոչ արար. եւ ոչ խնդայ ընդ կորուստ կենդանեաց: 14 Բանզի հաստատեաց 'ի լինել զամ: եւ 'ի փրկութիւն են գործք աշխարհի: եւ չիք 'ի նոսա դեղ սատակման: եւ ոչ թագաւորութիւն դժոխոց 'ի ներքոյ երկնի: 15 Զի արդարութիւն մշտնջենաւոր 16 եւ անմահ է: Իսկ ամբարիշտք ձեռօք՝ եւ բանիւք կոչեցին զնա առ իւրեանս: Բարեկամ՝ համարեցան զնա. եւ հալեցան: եւ դաշինս կռեցին ընդ նմա: զի արժանի իսկ են բաժանակից լինելոյ նմա:

## Գլ: Բ.

1 Խորհեցան յանձինս իւրեանց զանուղղս. եւ ասեն: սակաւ եւ ցաւագին են կեանք մեր: եւ ոչ գոյ բժշկութիւն 'ի վախճանի մարդոյ: եւ ոչ երեւեցաւ. որ դարձաւ 'ի դժոխոց:

*Զի

* Զի յանկարծակի ի մէնջ եղեաք. և յետ 2
այսորիկ լինիցիմք իբրև զչեղեալս ։
զի իբրև զծուխ է շունչ 'ի յունգունս
մեր. և իբրև զկայծակն բանն 'ի շարժ-
ման սրտի մերոյ։ * Յորոյ 'ի շիջանիլն 3
մոխիր լինի մարմինն. և ոգին սփռի
իբրև զօդ թոյլ։ * Եւ անուն մեր մո- 4
ռասցի ժամանակաւ ։ և ոչոք յիշատա-
կեսցէ զգործս մեր։ և անցցեն կեանք
մեր իբրև զհետս ամպոյ։ և իբրև զշա-
մանդաղ ցրուեսցին հալածեալք 'ի
ճառագայթից արեգական. և 'ի տա-
պոյ նո՟ր ծանրացեալք ։ * Զի անցք 5
ստուերի են կեանք մեր. և չիք խափան
վախճանի մարդոյ։ զի կնքեցաւ՝ և ոչոք
է որ դարձուցանէ ։ * Արդ՝ եկայք՝ 6
և վայելեսցուք 'ի բարութիս՝ որք կան։
և վարեսցուք արարածովք՝ զբաղնելք
իբրև 'ի մանկութե՟ն ։ * Պէսպէս գի- 7
նեօք՝ և անոյշ իւղօք լնանիցուք ։ մի՛
անցցէ առ մեօք ծաղիկ գարնայնոյ։
* Պսակեսցուք վարդից պսակիցուք՝ մինչ 8
չև թառամեալ իցեն ։ * Մի՛ոք ամե- 9
նեքին անմասն լիցի 'ի մեծէ ուրախու-
թենէս մերմէ։ յամ տեղիս թողցուք
նշանակ ուրախութե՟ն։ զի այն է բաժին
մեր. և սոյն վիճակ ։ * Եւ բռնադա- 10
տեսցուք զաղքատն անիրաւութե՟բ։ մի՛
խնայեսցուք յայրին. մի՛ խորշիցուք 'ի
բազմաժամանակեայ ալեաց ծերոյն։
* Եւ օրինադրութի՟ւն, բռնութի՟ւն մեր 11
եղիցի։ զի տկարութի՟ւն անպիտան յան-
դիմանի ։ * Դարանակալք լիցուք ար- 12
դարոյն. զի դժպհի եղև մեզ։ և հա-
կառակ կայ գործոց մերոց։ և նախա-
տինս դնէ մեզ զյանցանս օրինացն։ և
բամբասէ զմեզ մեղօք մանկութե՟ն մե-
րոյ։ * Խոստանայ ունիլ զգիտութի՟ւն 13
Ա՟Ծ ։ և որդի Տ՟Ր զանձն իւր անուա-
նէ ։ * Եւ եղև յանդիմանութի՟ւն մտաց 14
մերոց ։ * Ծանր է մեզ և տեսանել 15
զնա ։ զի աննմանք են այլոց կեանք նո՟ր
և այլազգի շաւիղք նո՟ր ։ * 'Ի գարշու- 16
թի՟ւն համարեցաք նմա ։ և խորշի 'ի ճա-
նապարհաց մերոց՝ որպէս 'ի պղծութեց ։
երանէ զվախճան արդարոց ։ և հպար-
տացեալ կոչէ հայր զԱ՟Ծ ։ * Տեսցուք 17
թէ ճշմարիտք իցեն բանք նո՟ր։ և փոր-
ձեսցուք զվախճան նո՟ր ։ * Եթէ իցէ 18
արդարև որդի Ա՟Ծ՝ պաշտպանեսցէ
նմա ։ և փրկեսցէ զնա Ա՟Ծ 'ի ձեռաց
հակառակորդաց ։ * Թշնամանօք՝ և 19
դանիւք խոշտանկեսցուք զնա։ զի զչափ
առցուք հեզութե՟ն նո՟ր. և խելամուտ
լիցուք անոխակալութե՟ն նո՟ր ։ * Մահու 20
խայտառակութե՟ն դատեսցուք զնա ։
եթէ լինիցի այցելութի՟ւն նո՟ր 'ի բանից
իւրոց։ * Զայս խորհեցան՝ և խաբե- 21
ձե

(Margin: 1. Մն. 29. 15. — Եսայ. 22. 13. և 56. 12. — 1. Կոր. 15. 32. — Մատ. 27. 43. — Յովհ. 7. 7. — Սաղ. 21. 9. — Երեմ. 11. 43. — Մատ. 27. 34.)

ցան։ զի կուրացոյց զնո՟ չարութի՟ւն իւր-
22 եանց։ * Եւ ոչ ծանեան զխորհուրդս
Ա՟Ծ ։ և ոչ վարձուց ակնկալան սրբու-
թե՟ն ։ ոչ ընտրեցին զպատիւ ոգւոց
23 անարատից ։ * Զի Ա՟Ծ հաստատեաց
զմարդն յանեղծութի՟ւն ։ և 'ի պատկեր
իւրոյ բարերարութե՟ն արար զնա ։
24 * Նախանձու բանսարկուին եմուտ
25 մահ յաշխարհ ։ * Եւ փորձեն զնա. որք
նորա վիճակին սակի են ։

(Margin: Հռոմ. 1. 21. — Ծննդ. 1. 27. և 5. 1. — Սիրաք. 17. 1. — Ծննդ. 3. 1.)

## ԳԼ: Գ.

1 Բայց ոգիք արդարոց 'ի ձեռին Ա՟Ծ
են ։ և ոչ մերձեսցի 'ի նոսա մահ ։
2 * Թուեցան յաչս անզգամաց՝ թէ մե-
ռան ։ և համարեցան չարչարանք ելք
3 նոցա ։ * Եւ գնալն 'ի մէնջ բեկումն .
բայց նոքա են 'ի խաղաղութեան ։
4 * Զի թէպէտ յաչս մարդկան տան-
ջեցան . այլ յոյս նոցա լի է անմահու-
5 թե՟բ ։ * Եւ սակաւիկ ինչ խրատեալք
գտցեն զմեծ բարութի՟ւն ։ զի Ա՟Ծ փոր-
ձեաց զնոսա՝ և եգիտ իւր արժանիս ։
6 * Իբրև ոսկի 'ի բովս քննեաց զնոսա ։
և որ՟ զողջակէզս զոհի ընկալաւ զնո՟,
'ի ժամանակի այցելութե՟ն իւրեանց ։
7 * Պայծառասցին ։ և իբրև զկայծակն
8 ընդ եղէգն ընթասցին ։ * Դատես-
ցեն զազգս՝ և կալցեն զժողովուրդս .
և թագաւորեսցէ նո՟ց Տ՟Ր յաւիտեան ։
9 * Յուսացեալք 'ի նա՝ իմասցին զճշմար-
տութի՟ւն ։ և հաւատարիմք սիրով առն
կալցին նմա ։ զի շնորհք և ողորմութի՟ւն
'ի վերայ սրբոց նո՟ր՝ և այցելութի՟ւն 'ի վ՟ր
10 ընտրելոց նորա ։ * Իսկ ամպարիշտք
ըստ խորհրդոց իւրեանց ընկալցին ըզ-
պատիժս . որք անփոյթ արարին զիրաւ-
11 անց . և եղեն ապստամբք 'ի Տ՟է ։ * Զի
որ զիմաստութի՟ւն և զխրատ անարգէ՝
թշուառական է . և ընդունայն է յոյս
նոցա . վաստակք նո՟ց անօգուտք . և ան-
12 պիտանք գործք նո՟ց ։ * Եւ կանայք նո՟ց
անմիտք . և չարաբարք մանկունք նո՟ց ։
13 * Եւ անիծեալք ծնունդք նոցա ։ զի
երանելի է ամուլ անարատ՝ որ ոչ գի-
տաց զանկողին յանցանաց . ընկալցի
14 զպտուղ այցելութե՟ն ոգւոց ։ * Եւ
ներքինի՝ որ ոչ գործեաց ձեռօք զանօ-
րէնութի՟ւն . և ոչ խորհեցաւ զՏ՟է զչա-
րութի՟ւն . տացի նմա շնորհ ընտիր ըստ
հաւատոյն . և վիճակ ցանկալի 'ի տա-
15 ճարի Տ՟ն ։ * Զի ընդ վաստակոց բա-
րեաց պտուղ փառաւոր է ։ և արմատ
16 անսղալ յիմաստութե՟է ։ * Որդիք շնա-
ցելոց թերակատարք եղիցին . և զաւակ
անօրէն անկողնից՝ սատակեսցի ։
17 * Եւ եթէ երկայնակեացք եղիցին՝
յոչինչ համարեսցին ։ և անարգ 'ի

(Margin: 2. Օրէն. 33. 3. — Սաղ. 5. 4. — Հռոմ. 8. 24. — 1 Պետ. 1. 13. — Մատ. 13. 43. — Մատ. 19. 28. — 1. Կոր. 6. 2. — Մատ. 25. 41. և 45. — Եսայ. 56. 4.)

վախճանի ծերութիւն նց ։ * Իսկ եթէ 18
արագ սատակեսցին՝ ոչ կալցին զյոյս
և ոչ յաւուր յանդիմանութեան մխիթա
րութիւն ։ * Զի ազգի անիրաւի չարա 19
չար կատարած ։

## ԳԼ․ Դ․

Լաւ է անզաւակութիւն հանդերձ 1
քաջութեամբ ։ քանզի անմահութիւն
է յիշատակ նորա ։ զի յԱյ ճանաչի՝ և
'ի մարդկանէ ։ * Ի հայիլ նմա՝ նմանօղ 2
լինի նմա ։ և 'ի մեկնելն նորա՝ անձկայ
ան նմա ։ և յաւիտեան պսակաւորս ձե
մեցուցանէ ։ անթառամ նահատակու
թեան պատերազմի յաղթեալ ։
* Բազմածնունդ բազմութիւն ամպարշ 3
տաց անպիտան լիցին ։ և 'ի փուտ շա
ռաւիղաց մի տացի արմատս 'ի խորս ։
և հիմն խախուտ մի հաստատեսցի ։
Սիրաք. 17. 6. Առակ. 7. 27. * Զի թէպէտ ոստօք առ ժամանակ 4
մի պտղեսցի․ սակայն զալիփալփուն
կանգնեալն 'ի հողմոյ շարժեսցի ։ և
'ի բռնութենէ հողմոյ արմատաքի խլես
ցի ։ * Բեկտեսցին շուրջ շառաւիղքն 5
թերակատարք ։ և պտուղ նոցա տա
րաժամ․ անպիտո՛ն 'ի կերակուր․ և յոչ
ինչ պիտանացու ։ * Զի յանօրէն անկող 6
նոյ որդիք ծնեալք․ վկայք են չարեաց
ծնողաց իւրեանց․ 'ի հարցափորձի իւր
եանց ։ * Իսկ արդարն եթէ հասցի 'ի 7
վախճանիլ՝ 'ի հանգստեան եղիցի ։
* Զի ծերութիւն պատուական՝ ոչ բազ 8
մաժամանակեայն է․ և ոչ որ թուով
ամացն չափիցի՝ այլ ալիք իմաստութիւն
մարդոյ են ։ * Եւ հասակ ծերութեան 9
Եբրայ. 11. 5. կեանք անարատք ։ * Զի հաճոյ եղեալ 10
Այ, սիրեցաւ ։ և կենդանւոյն 'ի միջոյ
մեղաւորաց փոխեցաւ ։ * Յափշտակե 11
ցաւ՝ զի մի չարութիւն ինչ շրջիցէ զիմաս
տութիւն իւր․ կամ նենգութիւն պատրի
ցէ զանձն նր ։ * Զի չարութիւն անըզ 12
գամութեան շլացուցանէ զբարիս ։ և յա
ծումն ցանկութեան խուճապէ զմիտս
անմեղս ։ * Կատարեալն 'ի սակաւուն 13
ելից զժամանակս երկայնս ։ * Զի ցան 14
կալի էր Տն անձն նորա․ վասնայնորիկ
տագնապեցաւ 'ի միջոյ չարեաց ։ իսկ
ժողովուրդք տեսին՝ և ոչ իմացան ։ և
ոչ եդին 'ի մտի զայսպիսի ինչ ։ * Եթէ 15
իրաւունք Այ 'ի վերայ սրբոց իւրոց ։
և այցելութիւն 'ի վերայ ընտրելոց նր ։
* Դատապարտէ արդար հանգուցեալ 16
զամբարիշտս կենդանիս՝ և մանկութիւն
վաղվաղակի վախճանեալ՝ զբազմա
մեայ ծերութիւն անիրաւի ։ * Զի տես 17
ցեն զվախճան իմաստնոյ․ և ոչ իմա
ցին՝ զինչ խորհեցաւ վն նր ։ և առ ինչ
զգուշացաւ նմա Տր ։ * Տեսցեն՝ և ան 18
գոսնեսցեն զնա ։ այլ զնոքօք Տր ծի
19 ծաղեսցի ։ * Եւ եղիցին յետ այսորիկ
'ի կործանումն անարգութեան և 'ի թշնա
մանս՝ և մեռեալս յաւիտենից ։ զի պայ
թուսցէ զնս անշշունջս ուռուցեալս ։
և շարժեսցէ զնոսա 'ի հիմանց՝ և մինչև
իսպառ խոպանասցին․ և եղիցին 'ի
ցաւս ։ և յիշատակ նոցա կորիցէ ։
20 * Հասցեն 'ի մթերս մեղաց իւրեանց
տագնապեալք․ և կշտամբեսցեն զնս
յանդիման անօրէնութիւնք իւրեանց ։

## ԳԼ․ Ե․

1 Յայնժամ արդարն կացցէ բազ
մաւ համարձակութեամբ՝ հանդէպ
նեղչաց իւրոց ։ և որոց անգոսնէին ըզ
2 վաստակս նր ։ * Տեսեալ զնա խռովես
ցին ահնարին երկիւղիւ ։ և զարհու
րեսցին 'ի վն սքանչելի փրկութեան նր ։
3 * Եւ զղջասցին 'ի միտս իւրեանց․ և
առ նեղութեան անձանց յոգւոց հանի
ցեն, և ասասցեն ։ այս այն այր է՝ զոր
երբեմն մեք ծաղր առնէաք․ և յա
4 ռակս նախատանաց ։ * Մեք անմիտք Յոբ. 3. 2.
զվարս դորա մոլորութիւն համարէաք՝
և զվախճան դորա անարգութիւն ։
5 * Զիարդ համարեցաւ ընդ որդիս
Այ․ և ընդ սուրբս վիճակ դորա ։
6 * Արդ երբեմն մոլորեցաք 'ի ճանապարհէն
ճշմարտութեան․ և լոյս ողորմութեան ոչ
լուսաւորեաց զմեզ ։ և արեգակն ար
դարութեան ոչ ծագեաց 'ի մեզ ։
7 * Անօրէնութեան, և կորստեան շաւղօք
լցաք ։ և գնացաք ընդ անկոխ անա
պատ ։ զճանապարհս Տն ոչ ծանեաք ։
8 * Զինչ շահ եղև մեզ հպարտութիւն․
և զինչ մեծութիւն ամբարտաւանութեանս
9 իցէ մեզ նպաստաւոր ։ * Անցին այն Ա.Մն. 29. 15.
ամ իբրև զստուեր ։ և իբրև զհամբաւ
10 առն ընթացեալ ։ * Եւ իբրև զնաւ Յոբ. 2. 5.
սահեալ 'ի վերայ ջուրց կուտակելոց ։
զորոյ իբրև անցանիցէ՝ ոչ գոյ զհետոն Առակ.
գտանել ։ և ոչ զշաւիղս գնացից նորա 30. 19.
11 'ի մէջ ալեաց ։ * Կամ իբրև զհաւու
թռուցելոյ յօդս․ որոյ ոչ գտանին
նշմարանք գնացից ։ բաղխելով մագլայն բաղխե-
պատառեաց զհողմն թեթևս․ և հեր լով մա-
ձեալ բռնութեամբ ընդ ոլորտս մտեալ ։ գլայն
յածել թևոյն յառաջադէմ սլանայ ։
և յետ այնորիկ ոչ գտանի նշանակ բա
12 նալոյ նր ։ * Կամ իբրև 'ի նետէ ձգե
ցելոյ 'ի նպատակ ։ կորեալ զօդն վաղ
վաղակի յինքն կարկատեալ առ 'ի չգի
13 տելոյ զանցս նր ։ * Այնպէս և մեք
եղեալք՝ պակասեցաք ։ և առաքինութե
զնշանակ ոչ կարացաք ցուցանել ։ բայց
14 'ի չարիս մեր մաշեցաք ։ * Այսպիսիս
ասասցեն 'ի դժոխս այնոքիկ․ որք մե
ղան ։

զանց ։ * Զի յոյս ամպարշտի իբրև 15 զփոշի յարուցեալ 'ի հողմոյ ։ և իբրև զեղեամն 'ի մրրկէ հալածեալ մանր ։ և իբրև զծուխ մաշեալ 'ի հողմոյ։ կամ իբրև զյիշատակ իջաւորի միոյ աւուր գնացելոյ ։ * Բայց արդարքն յաւիտեան 16 կացցեն ։ և 'ի Տէր է վարձք նոցա ։ և խնամ նոցա 'ի բարձրելոյն ։ * Վասն այնորիկ ընկալցին զարքայութեան վայելչութիւն ։ և զԹագն գեղեցկութեան 'ի ձեռանէ Տն ։ զի աջով իւրով հովանի լիցի նոցա ։ և բազկաւ իւրով վերակացու եղիցի ։ * Առցէ սպառազինութիւն զնախանձ 18 իւր ։ և վառեսցէ զարարածս իւր առ 'ի խնդրելոյ զվրէժս 'ի թշնամեաց ։ * Զգեցցի զրահս զարդարութիւն ։ և 19 դիցէ զսաղաւարտ զդատաստանն անաչառ ։ * Առցէ զվահան զսրբութիւն 20 անյաղթ ։ * Եւ սրեսցէ զհատու բարկութիւն 'ի սուսեր ։ պատերազմեսցի 21 խառն ընդ նմա և աշխարհս առ անզգամս ։ * Գնասցեն նետք կործանիչք 'ի 22 փայլատականց ։ որպէս 'ի լայնալիճ աղեղանէ ոստիցեն 'ի նպատակս ։ * Եւ 'ի 23 քարընկէց բարկութեան Թափեսցի լիով կարկուտ ։ զայրագնեսցի 'ի վերայ նոցա ջուր ծովու՝ և գետք ողողեսցեն յանխնայ ։ * Եդիցի հարցի նոցա հողմ բռնութեան ։ և իբրև զմրրիկ հոսեսցէ զնոսա ։ աւերեսցէ զամենայն զերկիր անօրէնութիւն ։ և խարդախութիւն կործանեսցէ զաթոռս բռնաւորաց ։ 24

## Գլ․ Զ։

Բարեգոյն է իմաստութիւն քան զարս։ 1 և այր հանճարեղ քան զզօրաւոր։ * Լուարուք թագաւորք ․ և 'ի միտ առէք ։ ուսարուք դատաւորք ծագաց 2 երկրի ։ * Ունկն դիք՝ որք ունիք զբազմութիւն ․ և պերճացեալ էք 'ի վերայ ամբոխից ազգաց ։ * Զի 'ի Տէ տուաւ 3 ձեզ իշխանութիւնդ ։ և հարստութիւն 'ի բարձրելոյն ։ որ պահանջեսցէ զգործս 4 ձեր ․ և քննեսցէ զխորհուրդս ։ * Զի սպասաւորք էք նորա թագաւորութեան ։ և ոչ դատէք ուղղութեամբ ։ և զի ոչ պահեցիք զօրէնս նորա և ոչ գնացիք ըստ կամացն Այ ։ * Ահիւ և տագնապաւ 5 հասցէ 'ի վերայ ձեր ։ զի դատաստան անաչառ իշխանաց լինի ։ * Այլ խառնիճաղանճն ներելի ողորմութեան է ։ 6 հզօրք հզօրագոյնս պահանջեսցին ։ 7 * Զի ոչ առնու ակն ամենեցունց 8 Տրն ։ և ոչ խորշի 'ի մեծութենէ ։ զի զփոքր՝ և զմեծ՝ ինքն արար ։ և զմի օրինակ խնամ ունի ամենեցուն ։ * Բայց 9 'ի վերայ զօրաւորաց՝ զօրաւոր քննութիւն հասանի ։ * Արդ առ ձեզ՝ ո՜վ բռունք՝ 10

էն բանք իմ ։ զի ուսանիջիք զիմաստութիւն ․ և մի սխալիցիք ։ * Զի որք պա- 11 հեցին սրբութեամբ զսրբութիւն ․ սրբեսցին ։ և որք ուսան զնոսա՝ գտցեն զպատասխանատուութիւն ։ * Արդ՝ ցանկացարուք բանից իմոց ․ փափագեցէք՝ և 12 խրատեսջիք ։ * Լուսաւոր և անթառամ է իմաստութիւն ։ և դիւրաւ երևի 13 սիրողաց իւրոց՝ և գտանի խնդրողաց իւրոց ։ * Հասանի առ ցանկացօղսն 14 իւր ։ առ յառաջագոյն ճանաչելոյ ։ * Որ կանխեսցի առ նա՝ ոչ վաստակեսցի ։ զի գտցէ զնա առ դուրս 15 իւր ։ * Խորհել և զնմանէ ածել զմիտս նէ՝ կատարեալ իմաստութիւն է ։ և որ 16 տքնի վասն նորա՝ վաղվաղակի անհոգ լիցի ։ * Զի ինքն շրջի խնդրել զարժանաւորս իւր ։ և 'ի շաւիղս երևի նոցա քաղցրութեամբ ։ և յամ հնարագիտու- 17 թիւն պատահի նոցա ։ * Զի սկիզբն նորա ճշմարիտ ցանկութիւն է խրատու 18 աշխարհի ։ * Եւ խնամ խրատու՝ սէր ։ և պահպանութիւն օրինաց նոցա՝ գութ ։ մտադիւրութիւն օրինաց նորա՝ հաստատութիւն անեղծութեան ։ * Իսկ անեղծու- 19 թիւն, մերձաւոր առնէ Այ ։ * Ցանկութիւն իմաստութեան՝ տանի յարքայու- 20 թիւն ։ * Արդ՝ եթէ ցանկայք աթոռոց՝ և գաւազանաց իշխանութեան ․ 21 բռունք ժողովրդեան ․ պատուեցէք զիմաստութիւն ․ զի յաւիտեան թագաւորիցէք ։ * Սիրեցէք զլոյս իմաստութեան 22 ամենեքեան ․ որք առաջնորդէք ժողովրդոց ։ * Իսկ եթէ զինչ է իմաստութիւն՝ և որպէս եղև ․ պատմեցից՝ և ոչ 23 թաքուցից 'ի ձէնջ զխորհուրդս ։ այլ 'ի սկզբանէ արարածոց քննեցից՝ և 24 ածից յայտ զգիտութիւն նորա ։ և ոչ սահրիւրեցայց 'ի ճշմարտութենէ նր ։ * Եւ ոչ նախանձու մաշեալ գնացից ընդ նմա ։ զի այն ոչ հաղորդի ընդ իմաստութեան ։ * Բազմութիւն իմաստնոց 25 փրկութիւն աշխարհի ։ և թագաւոր հանճարեղ՝ հաստատութիւն ժողովրդոց ։ 26 * Այսուհետև խրատեցարուք բանիւք իմովք՝ և օգտեցարուք ։ 27

## Գլ․ Է։

1 Եմ, եմ և ես մարդ մահկանացու՝ հանգոյն ամենեցուն ։ ծնունդ հողածին նախաստեղծին ։ և յորովայնի 2 մօր նկարեցայ մարմին ։ * Տասնամսեայ ժամանակաւ՝ մածեալ արեամբ ։ 'ի սերմանէ առն և 'ի ցանկութենէ քնոյ 3 'ի վերայ հասելոյ ։ * Եւ ես եղեալ՝ զհասարակաց օդն յիս ձգեցի ։ և 'ի նոյն նմանալիշտ յերկիր անկայ ։ զառաջին բարբառ զնման ամենեցուն՝ նոյնգունակ

Յոբ. 1. 21. 1. Տիմ. 6. 7. Յոբ. 28. 15. Առակ. 8.11. 3 Թագ. 3. 13. Մատ. 6.29. Մէր. 3. 1.

նակ լացեալ: * Ի խանձարուրս սնայ 4 և 'ի հոգս: * Ոչ ոք 'ի թագաւորաց այլ 5 ազգ սկիզբն կալաւ լինելոյ: * Մի 6 մուտ է ամենեցուն յաշխարհս՝ և մի ել հաստարակաց: * Վասն որոյ խնդ_ 7 րեցի 'ի Տէ աղօթիւք. և տուաւ ինձ հանճար: կոչեցի. և եկն ինձ հոգի ի_ մաստութե: * Ես նախամեծար ընտ 8 րեցի զնա՝ քան զիշխանութիւս և զա_ թոռս: Ես զմեծութի ոչինչ համա_ րեցայ առ նորա համեմատութեն:

* Ոչ նմանեցուցի նմա զականս պա_ 9 տուականս: զի ամ ոսկի առ նովաւ՝ որպէս սակաւ մի աւազ: և որպ զկաւ համարեսցի արծաթ առաջի նորա:

* Քան զառողջութի՝ և զգեղեցկու_ 10 թի սիրեցի զնա: և ընտրեցի զնա. նախ փոխանակ լուսոյ ունիլ: զի անշէջ է լոյսն՝ որ 'ի նմանէ է: * Ես եկին ինձ 11 բարութիւք միանգամայն ընդ նմա: և անթիւ մեծութի 'ի ձեռն նորա:

* Ուրախ եղէ ընդ ամենեսին՝ որոց ա_ 12 ռաջնորդէր իմաստութի: բայց գի_ տէի ոչ զնա՝ թէ ծնունդ իցէ սոցա: * Առանց նենգութե ուսայ և առանց 13 նախանձու բաշխեցից: զմեծութի նր ոչ թաքուցից: * Զի անպակաս գանձ 14 է նա մարդկան: որով՝ որք վարեցան՝ առ Այ առաքեցին զբարեկամութի: վասն առ 'ի խրատուէ պարգևացն ըն ծայեալք: * Բայց ինձ տացէ Այ ա_ 15 սել ըստ միտս. խորհիլ արժանաւոր ըստ բանիցս ասացելոց: զի նա իսկ իմաստութե առաջնորդ է. և իմաստ նոց ուղղիչ: * Զի 'ի ձեռին նր եմք. 16 և մեք՝ և բանք մեր՝ և ամ հանճար՝ և գործոց խելամտութի: * Զի նա ետ 17 ինձ զանվրէպ գիտութի գոյից: գի տել զհաստատութի աշխարհի. և զազ դեցութի բնութեց: * Զսկիզբն՝ և 18 զկատարած՝ և զմէջ ժամանակաց: զդ րջանաց փոփոխմունս. և զշրջիլ ժա մանակաց: * Զտարեաց բոլորմունս. 19 և զաստեղաց դիրս: * Զբարս անաս_ 20 նոց. և զգազանութի գազանաց: զհող մոց բռնութի. և զխորհուրդս մարդ_ կան՝ զայլակերպութիս տնկոց՝ և զզօ րութիս արմատոց: * Զորինչ ծա_ 21 ծուկ՝ և զորինչ յայտնի՝ գիտացի: Զի ամենեցուն ճարտարապետն ու_ սոյց ինձ զիմաստութի: * Զի գոյ 'ի 22 նմա հոգի մտաւոր: սր: միածին: բազ մաբաշխ: նուրբ: դիւրաշարժ: պարզ: անարատ: յայտնի: անվրէպ: բարե_ սէր: արագ: անարգել: բարերար: * Մարդասէր: հաստատուն: զգուշա_ 23 ւոր: անհոգ: ամենազօր: ամենահայեաց: և ամ իրաց բաւական: մտաւորաց:

24 սրբոց: նրբից: * Քան զամ շարժուն շարժագոյն է իմաստութի: դարմանէ՝ և ընդմտանէ ընդ ամ վասն յստակու 25 թե: * Քանզի ճաճանչ է Այ զօրու թեան. և ծագումն ճշմարիտ փառաց ամենակալին: վասն այնորիկ և ոչ մի 26 ինչ պղծեալ խառնի 'ի նա: * Քանզի նշոյլ է մշտնջենաւոր լուսոյն: և հայե լի անարատ Այ ազդեցութեն: և 27 պատկեր առատութե նր: * Մի է և ամի կարող: կայ յինքեան՝ և զամ նո րոգէ: և ըստ ազգաց յոգիս սուրբս փոփոխի: բարեկամս Այ և մարգա_ 28 րէս առնէ: * Ոչ զոք սիրէ Այ բայց զայն՝ որ ընդ իմաստութե կեցցէ: 29 * Զի գեղեցկագոյն է քան զարե_ գակն: և քան զամենայն դիրս աս_ տեղաց: ընդ լուսոյ համեմատեալ 30 առաւել գտանի: * Քանզի զնա գի_ շեր փոխանակէ՝ բայց իմաստութեն ոչ յաղթէ չարութիւն:

Եբր. 1. 3.

## ԳԼ: Ը:

1 Ձգի 'ի ծագաց մինչև 'ի ծագս օգ_ տակար առողջութբ: և դարմա_ 2 նէ զամ քաղցրութբ: * Զնա սիրե_ ցի. և քննեցի 'ի մանկութէ իմմէ. և խնդրեցի ածել ինձ հարսնութե: և 3 եղէ ցանկացող գեղոյ նր: * Զազնուա կանութի նորա փառաւորէ. զի կե_ նաց հաղորդութի ունի ընդ Այ: և ամենեցուն Տէրն սիրեաց զնա:

4 * Զի խորհրդակից է Այ իմաստու_ թեան: և ցանկացող գործոց նորա:

5 * Եթէ մեծութի ցանկալի է 'ի կենաց ստացուածս: իսկ զինչ իցէ մեծագոյն քան զիմաստութի. որ զամ առնէ:

6 * Եթէ հանճար գործիցէ ինչ՝ ո՞վ քան զնա յեղելոցս իցէ առաւել ճար 7 տարապետ: * Եթէ զարդարութիւն ոք սիրեսցէ. վաստակք նր առաքինու թիք են: զի զգիտութի և զհանճար ուսուցանէ՝ և զարդարութի: և զա_ րութի. քան զորս պիտանագոյն ինչ 8 չիք 'ի կեանս մարդկան: * Իսկ եթէ բազմահմուտ ոք լինիլ ցանկանայցէ՝ գիտէ զառաջինն՝ և զհանդերձեալն նկատել: ճանաչէ զդարձուածս բանից և զմեկնութիս առակաց: զնշանս՝ և զարուեստս յառաջագոյն գիտէ՝ և զելս ժամուց՝ և ժամանակաց:

9 * Արդ՝ եդի 'ի միտի՝ զնա ածել ինձ կե նաց կցորդ. ծանուցեալ՝ թէ է ինձ խորհրդակից բարեաց: և մխիթար հո 10 գոց՝ և տրտմութեց: * Կալայց վասն նորա փառս 'ի մէջ ժողովրդոց. և զպա 11 տիւ 'ի ծերոց: * Մանուկ սուր գտայց 'ի դատաստանի: և յաչս հզօրաց փա_

ռաւո_

ռաւորեցայց ։ 12 *Ի լռել իմում անսասցեն ինձ . և 'ի բարբառել՝ ուշ եդեալ հայեսցին յիս . և 'ի խօսելն իմում առաւել աւիբերան լինիցին ։ 13 *Վասն այս ունիցիմ նովաւ զանմահութիւն ։ և յիշատակ յաւիտենական այնոցիկ՝ զորս յետ իմ թողուցում ։ 14 *Դարմանեցից զժողովուրդս՝ և ազգք հնազանդեսցին ինձ ։ 15 *Սարսեսցին յինէն՝ իբրև լուիցեն բռունք սոսկալիք ։ 'ի մէջ բազմութեան երևեցայց առատ ։ և 'ի մէջ պատերազմի առաքինի ։ 16 *Մտեալ 'ի տուն իմ, հանգեայց նովաւ . զի ոչ ունի բզդառնութիւն բնակութիւն նորա ։ և ոչ ցաւս հաղորդութիւն կենաց նորա ։ այլ զուարթութիւն և զցնծութիւն ։ 17 *Զայս խորհեցայ յանձին՝ հոգացեալ 'ի սրտի իմում ։ եթէ անմահութիւն է ազգականութիւն իմաստութեան ։ 18 *Եւ 'ի բարեկամութեան նորա վայելչութիւն բարեաց ։ և 'ի վաստակս գործոց ձեռաց նորա մեծութիւն անպակաս . և 'ի կրթութեան խօսից նորա՝ հանճար ։ և փառաւորութիւն 'ի հաղորդութեան բանից նորա ։ և շրջէի խնդրէի՝ որպէս զի առից զնա առ իս ։ 19 *Մանուկ էի միտալարժ՝ և ոգւոյ բարւոյ դիպեցայ ։ 20 *Մանաւանդ զի ազնուագոյն էի . և եկի 'ի մարմին անարատ ։ 21 *Գիտացի՝ եթէ ոչ այլազգ լինիմ ժուժկալ՝ բայց եթէ Տր̃ տացէ ։ նա և այն իմաստութիւն է . ճանաչել թէ յումմէ է շնորհն ։ անկայ առաջի Տն̃ . աղաչեցի զնա յամենայն սրտէ իմմէ ։

## Գլ ։ Թ ։

1 Աստուած հարց՝ և Տր̃ ողորմութեան ։ դու ես՝ որ արարեր զա̃մ բանիւ քով ։ 2 *Եւ իմաստութբ̃ քով կազմեցեր զմարդն ։ զի տիրեսցէ արարածոց՝ 'ի քէն եղելոց ։ 3 *Եւ վարեսցէ զաշխարհս սրբութբ̃ և արդարութբ̃ ։ և ուղղութբ̃ ոգւոյ՝ դատեսցէ զդատաստան ։ 4 *Տուր ինձ զքոյոց աթոռոց զգարանակալ իմաստութիւնդ ։ և մի՛ խոտան առներ զիս 'ի քոց ծառայից ։ 5 *Զի ես ծառայ քո եմ . և որդի աղախնոյ քոյ ։ մարդ տկար՝ և սակաւ ժամանակեայ ։ և կրտսեր իմաստութբ̃՝ դատաստանի՝ և օրինաց ։ 6 *Զի թէպէտ և իցէ ոք կատարեալ յորդիս մարդկան, և առ 'ի քէն իմաստութիւնդ հեռի իցէ 'ի նմանէ, յոչինչ համարեսցի ։ 7 *Դու ընտրեցեր զիս թագաւոր ժողովրդեան քում ։ և դատաւոր ուստերաց քոց՝ և դստերաց ։ 8 *Ասացեր շինել տաճար 'ի լերին սրբութեան քոյ ։ և 'ի քաղաքի բնակութեան քոյ սեղան ։ 'ի նմանութիւն սրբոյ խորանին . զոր յառաջագոյն պատրաստեցեր 'ի սկզբանէ ։ 9 *Ընդ քեզ՝ և իմաստութիւն քո . որ գիտէ զգործս քո ։ և մօտ էր՝ յորժամ առնէիր զաշխարհս . և ճանաչէր զինչ հաճոյ իցէ յաչս քո ։ և զինչ ուղղութիւն 'ի պատուիրանս քո ։ 10 *Առաքեա զդա 'ի սրբութենէ երկնից ։ և յաթոռոյ փառաց քոց արձակեա զդա . զի եկեալ դադարեսցէ առ իս . և գիտացից՝ զինչ հաճոյ իցէ առաջի քո ։ 11 *Քանզի գիտէ դա զամենայն . և խելամուտ է ։ և առաջնորդեսցէ ինձ 'ի գործս իմ զգաստութբ̃ ։ և պահեսցէ զիս փառօք իւրովք ։ 12 *Եւ եղիցին ընդունելիք գործք իմ ։ և դատեցից զժողովուրդս քո արդարութբ̃ ։ և եղէց արժանի աթոռոյ հօր իմոյ ։ 13 *Զի ո՞վ է մարդ՝ որ գիտիցէ զխորհուրդս Այ̃ ։ կամ ո՞վ ածիցէ զմտաւ . 14 թէ զինչ կամիցի Տէր ։ *Զի խորհուրդք մահկանացուաց զանգիտօղք են ։ և զաղփաղփունք հնարագիտութիւնք մեր ։ 15 *Զի մարմին եղծանելի ծանրացուցանէ զոգի ։ և հակէ հողեղէն յարկ զմիտս բազմահոգս ։ 16 *Եւ հազիւ նկատեմք զերկրաւորս ։ և որ ինչ առ ոտս կայցէ՝ աշխատութբ̃ գտանեմք ։ իսկ որ ինչ յերկինս է՝ ո՞վ քննեսցէ ։ 17 *Եւ զխորհուրդս քո ո՞վ գիտաց՝ եթէ ոչ դու ետուր զիմաստութիւն ։ և առաքեցեր զհոգիդ քո սբ̃ 'ի բարձանց ։ 18 *Եւ ապա ուղղեցան շաւիղք երկրաւորաց ։ և զհաճոյս քո ուսան մարդիկ ։ և իմաստութբ̃ քով փրկեցան ։

## Գլ ։ Ժ ։

1 Նա զնախաստեղծ զհայրն աշխարհի զմիայն հաստատեալ պահեաց ։ 2 *Եւ փրկեաց զնա 'ի յանցանաց իւրոց ։ և ետ նմա զզօրութիւն ունելոյ զա̃մ ։ 3 *Մերժեցաւ 'ի նմանէ անիրաւն իւրով բարկութբ̃ , ընդ եղբայրասպան սրտմտութեանն կորեաւ ։ 4 *Վասն որոյ և զհեղեղեալ երկիր, միւսանգամ փրկեաց իմաստութիւն ։ չնչին փայտիւ զարդոյն նաւապետեաց ։ 5 *Նոյն և 'ի միաբանութիւն չարութեան ազգացն չփոթելոց ծանեաւ զարդարն՝ և պահեաց զնա անարատ Այ̃ ։ և 'ի վը̃ որդւոյն գթութեանք պահեաց զհզօրն ։ 6 *Նա զարդարն 'ի կորստական ամբարշտացն փախուցեալ՝ փրկեաց յիջանել հրոյն զհինգ քաղաքան ։ 7 *Որ 'ի վկայութիւն չարութեանն ծխեալ կայ խոպանացեալ ։ և անկատար ժամանակօք տունկք մրգաբերք ։ անհաւատի ոգւոյն՝ յիշատակ հաստատեալ զարձանն աղի ։

Margin references: Յթագ. 3. 9. — Սաղմ. 115.16. — Ա. Մնաց. 28. 4. 5. — Բ. Մնաց. 1. 9. — Առակ. 8.22. և 27. — Յոհան. 1. 1. — Եսայ. 40.13. — Հռոմ. 11.34. — Ա. Կորն. 2.16. — դու որ ետուր — Ծննդ. 1. 27. — Ծննդ. 2. 7. — Ծննդ. 4. 8. — Ծննդ. 7. 6. — Ծննդ. 11. 2. — Ծննդ. 19. 17.

*Զի

8 * Զի որոց զիմաստութիւն զանց արարեալ, ոչ միայն վնասեցան՝ չճանաչելոյ զբարին, այլև զանմտութիւն թողին յիշատակ յաշխարհի։ զի որովք յանցեան՝ մի կարասցեն ծածկել։ 9 * Իմաստութիւն զողջրինս իւր փրկեաց 'ի ցաւոց։ 10 * Նա փախուցելոյ 'ի բարկութենէ եղբօր՝ առաջնորդեաց արդարոյն 'ի շաւիղս։ եցոյց նմա զարքայութիւն այ․ և ետ զգիտութիւն սրբոց։ յաջողեաց նմա շաւիղս 'ի վաստակոց իւրոց։ և բազմացոյց զվաստակս նր։ 11 * Յագահութեան բռնաւորաց նորա՝ պաշտպանեաց նմա․ և մեծացոյց։ 12 * Նա պահեաց զնա 'ի թշնամեաց․ և 'ի դարանակալաց նր զգուշացաւ։ և 'ի զօրաւոր պատերազմի արար զնա յաղթօղ։ զի գիտասցէ թէ քան զամ ինչ զօրաւոր է Ածպաշտութիւն։ 13 * Նա զարդարն վաճառեալ՝ ոչ եթող 'ի ձեռանէ․ այլ 'ի մեղաց փրկեաց զնա։ ընդ նմա էջ 'ի գուբ։ 14 * Եւ 'ի կապանս ոչ եթող զնա 'ի ձեռանէ․ մինչև եբեր նմա զգաւազան թագաւորութեան․ և զիշխանութիւն 'ի վր բռնաւորաց նր։ սուտ եցոյց զբամբասօղս նր․ և ետ նմա զփառսն յաւիտենականս։ 15 * Նա զժողովուրդն սբ․ և զզաւակն անարատ փրկեաց յազգէ նեղչաց։ 16 * Եմուտ յոգի ծառայի Տն․ և ընդդէմ դարձաւ թագաւորաց ահաւորաց՝ արուեստիւք և նշանօք։ 17 * Հատոյց սրբոյն զվարձս վաստակոց նոցա։ առաջնորդեաց նց ընդ ճանապարհ սքանչելի․ և եղև նոցա հովանի 'ի տուէ․ և բոց աստեղաց 'ի գիշերի։ 18 * Անցոյց զնոսա ընդ ծով կարմիր․ և տարաւ զնոսա ընդ ջուրս բազումս։ 19 * Զթշնամիս նց ընկղմեաց․ և 'ի խորոց անդնդոյ եհան զնս 'ի վեր։ 20 * Վասնորոյ արդարք կողոպտեցին զամբարիշտս։ և օրհնեցին Տր զանուն քո սուրբ։ և զձեռն քո՝ որ մարտնչիւր 'ի վերայ նց՝ օրհնեցին միանգամայն։ 21 * Զի իմաստութիւն եբաց զբերանս համրոց։ և զլեզուս տղայոց եդ պարզախօսս։

## ԳԼ: ԺԱ։

1 Յաջողեաց զգործս նոցա 'ի ձեռն մարգարէին սրբոյ։ 2 * Ճգնեցան ընդ անապատ անշէն․ և յանկոխս հարին զխորանս։ 3 * Ընդդէմ դարձան պատերազմողաց․ և վանեցին զթշնամիս։ 4 * Ծարաւեցան՝ և կարդացին առ քեզ․ և տուաւ նոցա ջուր յապառաժ վիմէն։ և փարատ ծարաւոյ 'ի խիստ վիմէ։ 5 * Զի որովք տանջեցան թշնամիք նոցա։ 6 * Նոքիմբք սոքա կարօտեալք գտին զբարերարութիւն։

7 * Որոց փոխանակ մշտնջենաւոր գետոյն արեամբ կարմրացելոյ, խռովելոյ։ 8 * 'Ի կշտամբութիւն տղայակոտոր հրամանին․ ետուր զջուր առատութեան յանյոյս։ 9 * Ցուցեալ ի վն յայնմ ժամու ծարաւոյ․ որպէս տանջեցեր զհակառակորդսն։ 10 * Յորժամ զչափ առին․ թէպէտ և ողորմութբ խրատեցան։ ծանեան թէ զիարդ բարկութբ տանջեցան ամբարիշտք։ 11 * Զսոսա որպ հայր խրատեալ փորձեցեր․ և զնոսա որպ սաստիկ թագաւոր դատապարտեալ կշտամբեցեր։ 12 * Հեռացեալք և մօտեալք զնոյն օրինակ վտանգէին։ 13 * Զի կրկին կալաւ զնոսա տրտմութն և հեծութիւն անցելոց յիշատակաց։ 14 * Զի յորժամ լսէին իւրեանց տանջանօքն երախտաւորեալս՝ առնուին զքո չափ Տր։ 15 * Զի զոր երբեմն վաղուց հետէ՝ ընկեցեալ ուրացան․ և ծաղր առնէին․ 'ի վախճանի նոցին ելիցն զարմանային։ զի ոչ նման արդարոցն ծարաւեալք։ 16 * Փոխանակ անմիտ խորհրդոյն անիրաւութե իւրեանց․ որովք մոլորեալք պաշտէին զանմռունչ սողունս և ճճիս վատթարս։ առաքեցեր 'ի վերայ զբազմութիւն անխօսուն անասնոց 'ի վրէժխնդրութիւն։ 17 * Զի գիտասցեն․ թէ որովք մեղանչէ ոք՝ նովիմբք և տանջի։ 18 * Զի ոչ չքաւորիւր ամենազօր ձեռն քո․ որ հաստատեաց զաշխարհս յանկերպարան նիւթոյ՝ առաքել 'ի վերայ նց զբազմութիւն արջոց, կամ առիւծս սաստիկս։ 19 * Կամ նորագործս լի բարկութբ՝ գազանս անծանօթս։ կամ հրաշունչս փոտտօղս գոլութե։ կամ զհոտիչս ծխոյն շարաւոյ․ կամ որք սաստիկ կայծակունս յաչաց փայլատակեցուցանեն։ 20 * Որոց ոչ միայն վնասն կարող էր խորտակել զնոսա․ այլև տեսիլն ահիւ սատակել։ 21 * Եւ առանց այնոցիկ իսկ, միով հողմով կար էր կործանել․ հալածեալք և հասեալք 'ի դատաստանաց ոգւոյ զօրութե քոյ։ այլ զամենայն՝ չափով և թուով և կշռով կարգեցեր։ 22 * Զի մեծապէս կարող լինիլ յամ ժամ՝ առ քեզ է։ և զօրութե բազկի քոյ, ո՞վ է՝ որ ընդդէմ դառնայցէ։ 23 * Զի որպ մէտ մի 'ի նժարից կշռոց է ամ աշխարհս առաջի քո։ և որպ զկաթ մի առաւօտուն ցօղոյ՝ որ իջանէ յերկիր։ 24 * Եւ ողորմիս ամենեցուն՝ զի յամենայնի կարող ես։ և անտես առնես զմեղս մարդկան առ ապաշխարութիւն։ 25 * Զի սիրես զամ ինչ՝ որ է։ և ոչ գարշիս՝ յումեքէ՝ զորս արա_

տրարեր։ զի ո՛չ եթէ առ ատել հաստատեցեր ինչ՝ կամ արարեր։ 26 *Քանզի զիա՞րդ կայր ինչ՝ եթէ ոչ կամէիր՝ և կամ, որ 'ի քէն չէր կոչեցեալ՝ զիա՞րդ պահիւր։ 27 *Խնայես յամենեսեան. զի քո են Տր ոգեսէր։

## ԳԼ: ԺԲ:

1 Զի անեղծ հոգի է յամենեսեան։ Ո՛վ, որքան բարի և համեղ է Տր հոգի քո յամենեսեան։ 2 *Վն որոյ զյանցաւորսն առ սակաւ սակաւ յանդիմանես՝ և որովք մեղանչեն՝ յուշ արարեալ խրատես։ զի զերծեալք 'ի չարեաց՝ հաւատասցեն 'ի քեզ Տր։ 3 *Նա և զհին բնակիչսն սրբոյ երկրի քոյ ատեցեր։ 4 *Վն զգարշելի գործսն գործելոյ. զկախարդութեանց՝ և զանօրէն նուէրաց։ 5 *Զորդեկոտորսն զանողորմս. և զաղէկէր մարդկեղէն մարմնոց։ զոր մնուցանէին։ և արեան 'ի միջոյ խորհրդականաց քոյ՝ Ա.ծեղինաց. 6 *Նա՛ զձոխս զծնօղս անձանց անօգնականաց կամեցար կորուսանել 'ի ձեռն հարցն մերոց։ 7 *Զի զարժանի գերութիւն ընկալցին ծառայից Ա.Ծ. որ առ 'ի քեզ քան զամենայն պատուական էր երկիրն։ 8 *Այլ 'ի նոսա ոպ 'ի մարդիկ խնայեցեր։ առաքեցեր կարապետս զօրու քոյ զպիծակն։ զի զնո՛ առ սակաւ սակաւ սատակեսցեն։ 9 *Ո՛չ տկարացեալ 'ի պատերազմի. տալ զամբարիշտսն ընդ ձեռամբ արդարոց։ կամ անհնարին գազանօք։ կամ բանիւ՛ միայն համառօտս խորտակեալ։ 10 *Այլ առ սակաւ սակաւ դատելովն տայիր տեղի ապաշխարութեան։ ոչ անգիտացեալ թէ չար է արար նոցա։ և բնդաբոյս չարութիւն նց. և ոչ փոխին խորհուրդք նց յաւիտեան։ 11 *Զի զաւակ անիծեալ էր 'ի սկզբանէ։ ոչ եթէ երկուցեալ ինչ յումեքէ՝ յորոց վերայ մեղանչէինն, շնորհէիր զներելն։ 12 *Քանզի ո՛վ ասիցէ ցքեզ՝ թէ զինչ գործեցեր։ և կամ ո՛վ է. որ ընդդէմ դառնայցէ դատաստանի քում։ և ո՛վ կշտամբեսցէ զքեզ յազգացն կորուսելոց՝ զորս դու արարեր։ կամ ո՛վ դայցէ ընդ քեզ 'ի հակառակութիւն. 'ի վրէժխնդրութիւն մարդոց անիրաւաց։ 13 *Քանզի ոչ այլ Ա.Ծ գոյ բայց 'ի քէն. որում փոյթ իցէ վասն ամենեցուն։ զի յայտ արասցես՝ թէ ոչ 'ի տարապարտուց դատեցեր։ 14 *Նա՛ ոչ թագաւոր, կամ բռնաւոր՝ բառնալ զակն 'ի վեր կարասցէ ընդդէմ քո՝ վն որոց տանջեցերն։ 15 *Քանզի արդար ես՝ և արդարութբ վարես զամ։ զայն որ պարտ իցէ տանջելոյ, տանջեցեր՝ օտար համարեալ 'ի քումմէ զօրութենէդ։ 16 *Զի քո զօրութիւնդ իշխան է արդարութեան։ և տիրելդ ամենեցուն, խնայել տայ քեզ յամ։ 17 *Յուցանես զզօրութիւն 'ի վերայ անհաւատին. կատարեալ զօրութբ։ և զայնոսիկ՝ որք ոչ ճանաչեն զզօրութիւն քո՝ յանդիմանես։ 18 *Դու՝ որ տիրեսդ զօրութեան՝ հեզութբ դատես։ և բազմա՛ խնայութբ դարմանես զմեզ։ քանզի մօտ է քեզ՝ յորժամ կամիս կարող լինիլ։ 19 *Ուսուցեր զժողովուրդն այսպիսեօք գործովք, թէ պարտ է արդարոյն լինել մարդասէր։ և բարեյոյս արարեր զորդիս քո։ զի տաս 'ի վերայ մեղաց ապաշխարութիւն։ 20 *Զի եթէ զթշնամիս ծառայից քոց՝ և զմահապարտսն այնչափ ներելով պատժեցեր՝ և փրկեցեր. տուեալ ժամանակս և տեղիս. որովք զերծանիցին 'ի չարեաց։ 21 *Իսկ որչափ ճշմարտութբ դատես զորդիս քո. որոց ընդ հարսն երդմունս և դաշինս արարեր բարեացն աւետեաց։ 22 *Արդ զմեզ խրատեալ՝ զթշնամիսն բիւրապատիկս տանջես։ զի զքո բարերարութեանդ զչափ առեալ հոգասցուք. և դատեալք ակնկալցուք ողորմութեան։ 23 *Ուստի և զայնոսիկ. որք յանմտութեան կեանս էին տարապարտուց՝ իւրեանց գարշութբն տանջեցեր։ 24 *Քանզի՝ և մոլորութեան ճանապարհաւ երկայնագոյնս մոլորեցան։ համարեալ աստուածս համարեալ։ զորս և յանասունս թշնամանացն անարգէին զօրէն տղայոց անմտաց խաբեալք։ 25 *Վասն այնորիկ ո՛ց անխօսուն անասնոց դատաստան՝ ընդ խաղ արձակեցեր։ 26 *Նա՛ զի նոքա խաղուք սաստիցն ոչ խրատեցան. զարժանաւոր Ա.Ծ դատաստանն կրեսցեն։ 27 *Զի որովք ինքեանք 'ի չարչարելն զայրանային՝ նոքիմբք՝ զոր աստուածս համարէին, տանջեցին։ տեսեալ զայն զոր յառաջն ուրանային. ծանեան՝ զի Ա.Ծ ճշմարիտ է։ վասն որոյ և նշանակ դատապարտութեան եկն 'ի վերայ նոցա։

## ԳԼ: ԺԳ:

1 Զի ընդունայն էին ամ մարդիկ բնաւութբ. յորս էր Ա.Ծ անգիտութիւն։ և յերևելի բարութեացն ոչ կարացին գիտել զայն՝ որ էրն. և ոչ 'ի գործն նայեցեալք ծանեան զճարտարապետն։ 2 *Այլ կամ զհուր. կամ զհողմ. կամ զօդ արագ. կամ զաստեղաց շրջանս։ կամ զջրոյ բնութիւն. կամ զլուսաւորսն երկնաւորս զարբանեակս

աշխար-

աշխարհիս աստուածս համարեցան ։ 3 *Որոց եթէ ի՟ գեղն զուարճացեալք՝ զնո՟ աստուածս կարծեցին. գիտասցեն՝ թէ որչափ ևս նոցա Տ՟ր՟ն առաւել լաւ է. զի որ գեղեցկութեան արարչապետն է՝ նա հաստատեաց զնոսա ։ 4 *Ապա թէ ընդ զօրութիւն և ընդ ազդեցութիւն զարմանայցեն. իմասցեն ՚ի նոցանէ՝ որչափ ևս՝ որ կազմեաց զնո՟ առաւել զօրաւոր է ։ 5 *Զի ՚ի մեծութենէ և ՚ի գեղեցկութենէ արարածոց ը՟ս նմին համեմատութեան՝ և արարչագործն նո՟ երևի ։ 6 *Բայց սակայն, տակաւին գոյ և նոցա սակաւ ինչ մեղադրութիւն ։ զի և նոքա թերևս մոլորեալք խնդրեն զԱ՟ծ՟ և կամին գտանել ։ 7 *‖Ընդ գործս նորա յածեալք քննեն. և հաւանին տեսլեամբն. եթէ բարւոք են երևելիքս ։ 8 *Դարձեալ և նոքա ոչ են ներելիք ։ 9 *Զի եթէ այնչափ կարացին գիտել. զի բաւական լիցին նկատել զաշխարհս. զնո՟ Տ՟ր՟ն զիա՞րդ ոչ գտին վաղվաղակի ։ 10 *Թշուառականք են՝ և ՚ի մեռեալս յոյս նոցա ։ որք համարեցան աստուածս զձեռագործս մարդկան ։ զոսկի. և զարծաթ. և զճարտարութեան արուեստս, և զնմանութիւնս անասնոց ։ կամ զքար անպիտան. զձեռագործս նախնեաց զաստուածս յօրինեցին ։ 11 *‖Ապա թէ՝ ոք ատաղձագործ հիւսն զփայտ ինչ դեղեցիկ սղոցեալ. քերեաց ճարտարութեամբ զա՟մ կեղև նորա ։ և հնարեալ վայելուչ անօթ պիտանի կազմեաց ՚ի սպասաւորութիւն կենաց ։ 12 *Եւ զտաշեղ գործոյն ՚ի պատրաստութիւն կերակրոյ ծախեալ յագեցաւ. և որ ինչ ՚ի նոցանէն անպիտան և խոտան էր ։ 13 *Զ փայտն խեղաթիւր և ոստովք վարակեալ. առեալ գրոշեաց մտադիւրութեամբ գործոյն իւրոյ՝ և խելամտութեամբ իմաստութեան տպաւորեաց զնա ։ և պատկերի մարդոյ ։ 14 *Կամ անասնոյ վատթարի ճշգրտիւ նմանեցոյց զնա ։ ծեփեաց բռով. և կարմրացոյց անդուրաւ զգոյն նորա. և զա՟մ խնդրուածս նր՟ ծեփեաց հողով ։ 15 *Եւ արար նմա տուն ըստ նմին արժանի ։ եդ զնա առ որմ. հաստատեալ երկաթով ։ 16 *Եւ զգուշացաւ նմա՝ զի մի՛ կործանեսցի ։ և գիտէ՝ թէ և իւրում անձինն օգնել ոչ կարէ ։ քանզի է պատկեր՝ և կարօտ է օգնականութեան ։ 17 *Եւ վասն ամուսնութեան. և որդւոց՝ և ստացուածոց իւրոց՝ մատուցեալ շշնջէ առանձինն ։ 18 *Ամաչէ՝ և ոչ ամաչէ ։ Եւ վասն առողջութեան, զապիկարն կարդայ ։ և վ՟ս կենաց, զմեռեալն աղաչէ ։ և վասն ՚ի թիկունս հասանելոյ, տարակուսելոյն մաղթէ ։ 19 *Եւ վասն ճանապարհորդութեան, զայն. որ և զոտն յոտանէ չկարէ փոխել ։ և վասն ընչաւէտութեան՝ և գործոց ձեռաց կորովութեան, յանարգասաւորէն ձեռօք՝ զարգասաւորութիւն խնդրէ ։

‖ Հռով. 1.21.

‖ Եսայ. 44.12. Երեմ. 10.3.

## Գ Լ ։ Ժ Դ ։

1 Դարձեալ՝ թէ ՚ինաւ ելեալ ոք՝ ի՟ ամեհի ալիս կամիցի ճանապարհորդել, առ փայտն՝ որ քան զնաւափայտն տկարագոյն է, աղաղակէ ։ 2 *Զի զայն թէպէտ և ցանկութիւն շահիցն հնարեցաւ. և ճարտարապետ իմաստութեամբ կազմեաց ։ 3 *‖Սակայն քո հայր՝ վարէ տեսչութիւն ։ զի ետուր և ՚ի ծովու ճանապարհ. և ՚ի մէջ ալեաց շաւիղ զգուշաւոր ։ 4 *Յայտ արարեալ՝ թէ ա՟մի կարող ես փրկել՝ թէպէտ և առանց ճարտարութեան ոք ելանիցէ ՚ի վ՟ր ։ 5 *Բայց կամիս՝ զի մի՛ դատարկասցի գործ իմաստութեան ։ վասն այնորիկ և չնչին փայտին հաւատան մարդիկ զանձինս իւրեանց ։ և շրջեալ ընդ ալիս դոյզն լաստիւն ապրեցան ։ 6 *‖Զանզի և ՚ի սկզբանէ ՚ի կորնչիլ սկայիցն ամբարտաւանից. յոյս աշխարհի ՚ի լաստափայտն ապաւինեալ եթող աշխարհի զաւակ լինելոյ՝ քո ձեռամբդ նահապետեալ ։ 7 *Զի օրհնեալ է փայտն որով լինի արդարութիւն ։ 8 *‖Եւ ձեռագործն անիծեալ. ինքն՝ և որ արարն զնա ։ զի նա արար՝ և սա եղծանելի աստուած անուանեցաւ ։ 9 *‖Զի հաւասարակ ատելիք են Ա՟յ՟ ամբարշտեալն և ամբարշտութիւն նր՟ ։ 10 *Զի գործն և գործօղն առ հասարակ տանջեսցին ։ 11 *Վասն այնորիկ և ՚ի կուռս հեթանոսաց այցելութիւն եղիցի ։ զի ՚ի մէջ ա՟յ արարածոց՝ ՚ի գարշութիւն եղեն. և ՚ի գայթագղութիւն որդւոց մարդկան ։ և յորոգայթ ոտից անզգամաց ։ 12 *Զի սկիզբն պոռնկութեան՝ հնարագիտութիւն կռոց է ։ և գիւտք նո՟ ապականութիւն կենաց ։ 13 *Զի ոչ էր ՚ի սկզբանէ. և ոչ կացցէ յաւիտեան ։ 14 *Նորակրօնաւորութեամբ մարդկան եմուտ յաշխարհս ։ և վասն այնորիկ ՚ի կարճոյ հնարեցաւ վախճան նոցա ։ 15 *Զի տարաժամ սգով թախծեալ հայր՝ վաղամեռիկ լինելոյ որդւոյ՝ արար զպատկեր ։ արդ՝ զայն ժամու մեռեալ զմարդն՝ այժմ իբրև զաստուած պատուեաց ։ և աւանդեաց իւրոց հնազանդելոց՝ խորհուրդս և նուէրս ։ 16 *Ապա ժամանակաւ ձգեալ ամբարիշտ սովորութիւն. որպէս զօրէնս պա_

‖ Ծննդ. 14.21.

‖ Ծննդ. 6.7. և 7.7.

‖ Սաղմ. 113.4. Բարուք 6.3.

‖ Սաղմ. 5.7.

պաշտեցաւ ։ և բռնաւորաց հրամանաւ կարգեցան 'ի պաշտօն դրօշեալքն ։ 17 * Զորս յանդիման պատուել ոչ կարէին . կամ վ՛ն հեռի բնակելոյ՝ զերացական տեսիլն . զնոյն օրինակ քանդակեալ դրօշեցին . և յայտնի պատկեր պատուելոյ թագաւորին արարին ։ զի ո՛ք զմօտաւոր զհեռաւորն ողոքեսցեն փութով ։ 18 * 'Ի յաճախութի պաշտամանն զանգէտսն . յետ այնորիկ ճարտարին համարձակեաց առատութ՛ի արուեստագիտութե ։ 19 * Զի նա թերեւս վ՛ն զիշխանին կամեցեալ զմիտս հաճելոյ՝ բռնադատեաց արուեստին. ածեալ զմանկութ՛ին 'ի գեղեցկութ՛ի ։ 20 * Իսկ բազմութ՛ին պատրեալ վասն պատշաճողութե գործոյն ։ զայն որ յառաջքան զսակաւ մի պատուեալ էր մարդ՝ այժմ պաշտօն համարեցաւ ։ 21 * Եւ՛ այն եղև կենաց մարդկան 'ի դայթագղութ՛ի ։ զի որում յանժամ առ վշտի 'ի բռնութե՛ն ծառայէին մարդիկք ։ արդ զանհաղորդական անունն՝ քարանց և փայտից եդին ։ 22 * Եւ՛ այն ոչ եղև բաւական նդ . առ 'ի մոլորելոյ յԱ՛Յ գիտութէն ։ այլ մինչ 'ի մեծի պատերազմի անգիտութե կեին , զայնպիսի չարիս խաղաղութ՛ի անուանէին ։ 23 * ‖ Կամ զորդեկոտոր նուէրս . կամ զգաղտնի խորհուրդսն . կամ զմոլեգին յայլոց կրօնից զանառակութ՛իս բերեալ ։ 24 * Ոչ զկեանս . և ոչ զամուսնութիւն տակաւին սուրբ պահէին ։ այլ զընկեր՝ կամ վարանեալ սպանանէ ։ կամ գաղտամեստ թախանձեցուցանէ ։ 25 * Եւ ա՛մ ինչ՝ խառնիխուռն ։ արիւն . և սպանութ՛ի ։ գողութ՛ի . և նենգութ՛ի ։ ապականութ՛ի ։ անհաւատութ՛ի . խռովութ՛ի ։ երդմնութ՛ի ։ աղմկութ՛ի ։ 26 * Բարեաց երախտեաց անյիշատակութ՛ի ։ ոգւոց պղծութ՛ի ։ ծննդեան փոփոխումն ։ ամուսնութե անառակութ՛ի ։ շնութիւն ։ գիճութ՛ի ։ 27 * Զի անուն կռոցն պաշտօն ա՛մ չարի սկիզբն . և պատճառ . և կատարած է ։ 28 * Կամ թէ ուրախ եղեալ մոլին . կամ թէ մարգարէանան սուտ ։ կամ թէ կեան անիրաւութ՛ի ։ կամ թէ 'ի սուտ երդումն վաղվաղեն ։ 29 * Զի յանշունչ կուռսն յուսացեալ երդնուն սուտ . և պատժի ակն ոչ ունին ։ 30 * Արդ երկոքեան եկեսցեն 'ի վ՛ն նդ ։ զի չարաչար խորհեցան զԱ՛Յ՝ ունկնդիրք լեալք կռոցն՝ և սուտ երդուան 'ի կուռսն . արհամարհելով զսրբութիւնն ։ 31 * Զի ոչ եթէ երդմնելեացն զօրութիւն՝ այլ մեղուցելոցն դատաստան հանէր ընդ գլուխ զանիրաւաց զյանցանս ։

Բ. Օրէ. 18.10. Եզեկ. 7. 6.

## Գլ ։ ԺԵ ։

1 Բայց դու Ա՛Ծ մեր՝ քաղցր . և ճշմարիտ . և երկայնամիտ . ողորմութ՛ 2 դարմանես զա՛մ ։ * Զի եթէ մեղանչեմք՝ քո եմք . քանզի գիտեմք զզօրութ՛իս քո ։ բայց ոչ մեղիցուք՝ քանզի գիտեմք եթէ 'ի քում համարի եմք ։ 3 * Զի և ճանաչելն իսկ զքեզ՝ բովանդակ արդարութ՛ի է ։ և գիտելն զզօրութ՛ի քո՝ արմատ անմահութեան ։ 4 * Զի ոչ մոլորեցոյց զմեզ մարդկան հնարարուեստ հնարագիտութ՛ի ։ և ոչ ստուերագրացն անպտուղ աշխատութ՛ի . պատկերք մեքենայագործք՝ պէս 5 պէս գունիւք ։ * Որոց տեսիլն անմըտաց 'ի ցանկութ՛ի գայ ։ փափագի պատկերի մեռելոց անշունչ տեսլեան ։ 6 * Չարաց արուեստագէտք՝ արժանիք այնպիսւոյ յուսոյ ։ և որք գործենն՝ և որք փափագինն . և որք պաշտենն ։ 7 * ‖ Քանզի և բրուտ լմեալ զկակուղ կաւն , դնէ 'ի վերայ դրգան . և ստեղծանէ անօթս առ իւրաքանչիւր ումեք սպասու մերոյ ։ սակայն անդստին 'ի կաւոյ ստեղծ՝ կամ թէ սրբութեանց ինչ անօթս 'ի սպասաւորութ՛ի . կամ թէ գործոյից . կամ թէ ամենեւին նոցին հակառակ ։ ըստ նմին օրինակի . և 'ի նոցանէ իւրաքանչիւր ումեք են պէտքն ։ դատաւոր կաւագործն է՝ և 8 վշտահան ։ * Զի 'ի զուր 'ի նմին կաւոյ զաստուած ստեղծանէ ։ որ յառաջ քան զփոքր մի յերկրէ եղեալ . յետ սակաւ միոյ 'ի նոյն երթայ՝ ուստի առաւ . և զպարտս ոգւոյ պահանջեալ ։ 9 * Այլ կայ 'ի նմա հոգ՝ ոչ զի աշխատելոց է և ոչ զի սակաւավախճան կեանս ունի . այլ ընդ ոսկերիչս և ընդ արծաթաձոյլս հակառակի . և պղնձագործաց նմանի ։ և փառս համարի . զի 10 զգարշելիսն ստեղծանէ ։ * Մոխիր է սիրտ նդ . և հող արհամարհեալ յոյս նդ ։ և քան զկաւ անարգագոյն կեանք 11 նորա ։ * Զի ոչ ծանեաւ զստեղծիչն իւր . և ոչ զայն՝ որ շնչեաց 'ի նա ըզշունչն ազդեցուցիչ ։ և որ փչեաց 'ի նա 12 զոգի կենդանական ։ * Այլ խաղ համարեցան զկենդանութ՛իս մեր ։ և զկեանս տօնավաճառ շահից ։ զի պարտ է՝ ասեն . ուստի և իցէ . թէպէտ և 13 'ի չարաց է , շահել ինչ ։ * Եւ՛ նա քան զամենեսեան առաւել գիտէ՝ թէ մեղանչէ ։ զի 'ի հողեղէն նիւթոյ՝ դիւրաբեկ անօթս դրօշեալ կազմէ ։ 14 * Եւ՛ ամենեքեան անմտագոյնք և

‖ Հռով. 9.21.

խաղք քան զանձն տղայոց ։ Թշնամիք
ժողովրդեան քո բռնադատեցին զնա ։
15 * Զի և զամենայն կուռս ազգաց աստ
ուածս համարեցան ։ որոց և ոչ աչաց (Սաղմ. 113. 4. և 134. 6)
պիտանութի՛ւն էր 'ի տեսանել ։ և ոչ
ռունչք առ 'ի ձգելոյ զօդս ։ և ոչ ականջք
առ 'ի լսելոյ ։ և ոչ մատունք ձեռաց
առ 'ի շօշափելոյ ։ և ոտք նոցա դատարկ
16 կացեալք 'ի գնալոյ ։ * Զանզի մարդ
արար զնոսա ․ և ոգի մուրացիկ ստեղծ
զնոսա ․ և ոչոք կարօղ է ստեղծանել
17 զնմանութի Այ ։ * Զանզի մահկա
նացու է՝ և զմեռեալ գործ գործէ
անօրէն ձեռօք ։ զի ինքն լաւ է քան
զպաշտամունս իւր յորոց ինքն կենդա
18 նի է՝ և նոքա ոչ երբէք ։ * Նա և զգար
շելի անասունս պաշտեն ։ և այն է ան
19 հնարին անմտութի ։ * Զի եթէ ընդ
այլսն կշռեսցին, վատթարագոյնք գտա
նին ։ ոչ որպէս ցանկանան, այնպէս
գեղեցկութի՛ք 'ի կերպարանս նցիցեն ․
բայց զի վրիպեցան յԱյ գովութենէն ․
և 'ի նորին օրհնութենէ ։

## ԳԼ. ԺԶ.

1 Վասն այնորիկ ըստ նոցին նմանու
թե արժանաւորապէս տանջե
ցան ։ և վասն բազմութե ճճեացն գա
2 նալիցք եղեն ։ * Փոխանակ այնր տան (Իմաստ. 11. 31.)
ջանաց դիւրեցեր ժողովրդեան քում ․
'ի ցանկութի տենչանաց՝ նորաճաշակ
կերակուր պատրաստեցեր զլորամար
3 գին ։ * Զի նոքա ցանկացեալք կերա
կրոց յուշելովքն՝ որք առաքեցան նց ։
և 'ի կարևոր կերակրոյն ցանկութենէ
արգելցին ։ և սոքա առ սակաւ կարօ
տացեալք 'ի նոր ճաշակման վայելեսցեն ։
4 * Զի պարտ էր 'ի վերայ նոցա անհրա
ժեշտ կարօտութեցն գալ ։ քանզի
բռնաւորքն ․ և սոցա ցուցանել միայն ․
թէ որպէս թշնամիքն տանջեսցին ։
5 * Զանզի յորժամ նոցա անհնարին (Իմաստ. 21. 6. 1. Կորն. 10. 9.)
բարկութի դազանացն եհաս 'ի վերայ ․
և հարուածօք կամակոր օձիցն սատա
6 կեին ։ * Ոչ մինչև իսպառ յամեաց
բարկութի քո ․ այլ 'ի խրատ՝ առ սա
կաւ մի խռովեցան ․ զի նշանակ փր
կութե ունիցին ․ առ 'ի յիշելոյ զպատ
7 ուիրանս օրինաց քոց ։ * Զի որ դառ
նայրն՝ ոչ վասն այնր՝ զոր տեսանէրն
ապրիւր ․ այլ վասն քո՝ որ ամենեցուն
8 փրկիչդ ես ։ * Եւ այնու հաւանեցու
ցեր զթշնամիս մեր՝ եթէ դու ես՝ որ
9 փրկես յամենայն չարէ ։ * Զի զո (Յայտ. 8. 24. և 10. 4. Յայտն. 9. 7.)
մանս մարախոյ և մկանց կոտորեցին
հարուածք ․ և ոչ գտաւ բժշկութիւն
անձանց նոցա՝ զի արժանի էին այն
10 պիսեացն տանջելոյ ։ * Բայց որդւոց
քոց՝ և ոչ թունաւորաց վիշապաց յաղ
թեցին ժանիք ․ և ողորմութիւն քո
անդրպետեաց՝ և բժշկեաց զնոսա ։
11 * Զի 'ի յիշատակս բանից քոց անդէն
պատուհասէին ․ և վաղվաղակի փր
կէին ։ զի մի 'ի խոր մոռացումն անկա
նիցին ․ և անպատսպարանք լինիցին
'ի քումմէ օգնականութենէդ ։
12 * Զանզի ոչ դեղք՝ և ոչ սպեղանեաց
դիրք բժշկեցին զնոսա ։ այլ քո Տէր
բանդ՝ որ զամենայն բժշկէ ։
13 * Զանզի կենաց՝ և մահու դու ու (2. Օրին. 32. 39. 1 Թագ. 2. 6. Տոբ. 13. 2.)
նիս իշխանութի ․ իջուցանես 'ի դժոխս՝
14 և հանես ։ * Այլ մարդ սպանանէ չա
րութե իւրով ։ և ելեալ ոգին անդրէն
ոչ դառնայ ։ և ոչ պարանի շունչն
15 գրաւեալ ։ * Զանզի 'ի քումմէ ձե
ռանէ փախչիլ անհնարին է ։
16 * Անարժան գիտել զքեզ ամբարիշտք՝ (Յայտ. 9. 23.)
բայց զօրութե բազկի քոյ տանջեցան՝
նոր անձրևօք կարկտի ․ և անհրաժեշտ
շառաչմամբ հալածեալք ․ և հրով ծա
17 խեալք ։ * Եւ որ ինչ նորանշան սքան
չելին էր ։ զի ամենաշիջոյց ջուրն ա
ռաւել գործէր զհրոյ զօրութի ․ զի մար
18 տիկ արդարոց է աշխարհս ։ * Երբեմն
ընտանենայր բոցն ․ զի մի այրեսցէ
զարձակեալ գազանսն 'ի վերայ ամ
բարշտաց ։ այլ նոքա հայեցեալ տե
սանէին ․ թէ Այ դատաստանաւն
19 խուճապին ։ * Եւ երբեմն 'ի մէջ ջրոյն՝
առաւել քան զզօրութի հրոյ բորբո
քիւր ։ զի զմեղանչական երկիրն ապա
20 կանեսցէ ։ * Ընդ որոյ՝ զկերակուր (Յայտ. 16. 14. Իմաստ. 11. 7. Սաղմ. 77. 25.)
հրեշտակաց ջամբեցեր ժողովրդեան
քում ․ և զպատրաստական հացն յերկ
նից ետուր նոցա առանց ջանալոյ ։ առ
ամենայն ցանկութի բաւական ․ և
առ ամենայն համդերձանս ճաշակաց ։
21 * Զի քոյ գոյաւորութիդ առ քո որդիս (Յովհ. 6. 31.)
եցոյց զքաղցրութի ըստ մատուցանե
լոյ ցանկութենն արբանեկեալ ։ առ որ
զինչ և ոք կամէր՝ խառնէր ։
22 * Ձիւն և սառն կային ընդդէմ հրոյ՝ (Յայտ. 9. 23.)
և ոչ հալէին ։ զի ծանիցուք՝ թէ զպտ
ուղ թշնամեացն ապականէր ։ հուր
բորբոքեալ ընդ կարկտի ․ և փայլա
23 տակեալ 'ի մէջ ջրոց ։ * Եւ այն դար
ձեալ՝ զի արդարք կերակրեսցին ․ և
զիւր զօրութիւնն մոռանայցէ ։
24 * Զի քո արարածք քեզ արարչիդ ար
բանեկեն ․ և սաստկանան 'ի տանջանս
անիրաւաց ։ և օրհնի բարերարութի ․
փոխանակ 'ի քեզն յուսացելոց ։
25 * Վասն այնորիկ և յայնժամ յամենայն
ինչ՝ փոփոխեալ ամենակերակրիչ պար
գևիդ քում լինիւր սպասաւոր ․ առ 'ի
կամս քոյոցն կատարելոյ ։

* Զի

Բ․ Օրէ․ 8. 3. Մատ․ 4. 4.

26 * Զի ուսանիցին որդիքն քո՝ զորս դու սիրեցեր Տր․ եթէ ոչ արդարք արմտեաց կերակրեն զմարդ՝ այլ քո բանն զհաւատացեալսն 'ի քեզ պահէ։
27 * Զի որ 'ի հրոյն ոչ ապականիւր, (վայրապար) 'ի դոյզն ճառագայթից արեգական ջեռեալ հալիւր։
28 * Այդ զի յայտնի լիցի․ թէ պարտ է նախ քան զարեգակն կանխել 'ի գոհութիւն քեզ․ և յառաջ քան զծագել լուսոյ յանդիման լինիլ քեզ ։
29 * Զի յոյս անշնորհակալին որպէս ձմերայնոյ հալեսցի ։ և ծորեսցի որպէս զջուր անպիտան։

## ԳԼ․ ԺԷ։

1 Զի մեծամեծք են դատաստանք քո․ և դժուարապատումք ։ վա այնորիկ անձինք անխրատից մոլորեցան ։
2 * Արդ կարծեցին բռնադատել զազգն սբ անօրէնքն ։ կապեալք 'ի խաւարի․ և կաշկանդեալք երկայն գիշերոյ ։ արգելեալք ընդ յարկօք՝ փախստականք 'ի յաւիտենական տեսչութենէն անկեալք դնէին ։

Ելից․ 10. 23.

3 * Զի ղօղեալ համարէին ընդ գաղտնեօք մեղաց ։ ընդ անճաճանչ յիմարութբ առագաստի ցրուեցան․ անհնարին յիմարեալք՝ և խուճապիւք խռովեալք ։
4 * Քանզի և ոչ որ ունիւր զնա մթութի, աներկիւղս պահէաց ։ զի բոմբիւնք գիշերս կանք շուրջ զնոքօք պատեալս արբեցուցանէին ։ և ցնորք անժպիրհք խոժոռադիմացն երևէին ։
5 * Եւ հրոյ՝ և ոչ մի ինչ բռնութի կարաց լուսաւորել ։ և ոչ խարուկածինք բորբոքեալք բոցք հանդարտէին լուսացուցանել զտխուր գիշերն ։
6 * Բայց միայն երևիւր նոցա ինքնակաց խարոյկ լի երկիւղիւ․ զարհուրեալք յաներևոյթ տեսլենէն այնորիկ․ համարէին չարևս՝ քան զոր տեսանէինն ։

Ելից․ 7.22. և 8. 7.

7 * Մոգութեան արուեստտի խաբէութիւն անկանէին․ և 'ի խորհուրդս իմաստութեան կշտամբէին թշնամանալիցք ։
8 * Զի որք խոստանային զարհաւիրս և զխռովութիւն հալածել յանձնէ ախտացելոյն․ նոքա զծաղրալից երկիւղն ախտանային ։
9 * Զի թէպէտ և ոչինչ նորանշան զարհուրեցուցանէր, ճճեաց անցիւք՝ և սողնոց շնչմամբք խուճապեալք և դողացեալք սատակէին ։ և յանուրեք փախուստ օդն՝ անդրէն հայելոյ ուրանային ։
10 * Զի երկչոտին առանձինն լինի չարութի ինքեամբ վկայէ դատապարտեալ ։ միշտ կանխէ զանհնարինսն ․ նեղեալ 'ի խղճէ մտաց ։
11 * Քանզի ոչ ինչ է երկիւղ՝ եթէ ոչ մատնութիւն մտացն օգնականութեանց ։
12 * Մինչդեռ 'ի ներքս է․ սակաւ ինչ է ակնկալութի ։ և բազում՝ համարի զանգիտութեանն․ որ ածէ 'ի վերայ զպատճառս տանջանացն ։
13 * Եւ նոքա զանհնարին գիշերն յանմատուցից մթից դժոխոց գործոցն 'ի վ'րյ հասելոց․ զնոյն քուն ննջեցին ։
14 * Եր՝ զի նշանօք ցնորիցն պակչէին ։ և էր՝ զի ոգւոյն մատնութեամբ լքանէին ։ զի յանկարծօրէն․ և յանկարծուստ մածանիւր ահն 'ի վ'րյ ։
15 * Ապա այն զիարդ և էր․ անդ անկանիւր՝ և պահիւր աներկիւղ բանտարգելեալ ։
16 * Եթէ հողագործ էր՝ և եթէ հովիւ ։ և կամ՝ եթէ անապատական աշխատութեանն գործաւոր՝ ըմբռնեալ յանլոյծ տագնապ հասանիւր ։
17 * Քանզի միով խաւարային շղթայիւ ամենեքեան կապեցան ։ եթէ հողմ շնչէր․ և եթէ 'ի թանձրախիտ ոստոց քաղցրաձայն հաւուց բարբառ հնչէր ։ եթէ յորդութի ջրոց՝ հոսելոց բռնութբ ։

հնչիւր

18 * Եւ եթէ ընթացք աներևոյթք անասնոցն կայտռելոց․ եթէ բարբառ ահագին գազանաց գոչելոց․ և եթէ բոմբիւն սպառազինաց վիմաց հոլովելոց․ կամ անդրէն յանձն բեկելոյ՝ 'ի քարանձաւաց լերանց՝ ձայնից արձագանգաց՝ լքոյց զնոսա զարհուրեցուցեալ ։
19 * Զի ամենայն աշխարհ պայծառացուցեալ լուսով լուսաւորիւր․ և անխափան գործովք կայր պնդակազմ ։
20 * Բայց միայն 'ի վերայ նոցա տարածանէր ծանր գիշեր․ յօրինակ խաւարին՝ որ յաջորդելոց էր զնոսա, ինքեանք ինքեանց իսկ ծանրագոյնք էին քան զխաւարն ։

## ԳԼ․ ԺԸ։

1 Բայց սրբոց քոց լոյս մեծ էր ։ զորոյ զբարբառն միայն լսէին․ և զկերպարանսն ոչ տեսանէին ։ զի և նոքա՝ որք զայնպիսի չարչարանս կրեցին, երանէին ։

Ելից․ 10. 23.

2 * Զի և ոչ վնասէին յառաջագոյն զրկեալքն՝ գոհանային․ և վասն անցանելոյ աղաչէին ։
3 * Ընդ որոյ սիւն բոցոյ առաջնորդ լինիւր անծանօթ ճանապարհին ։ զարեգակն անվնաս եւտուր առատ տասն ջականութե ։

Ելից․ 14.24. Սաղ․ 77. 14. և 104.39.

4 * Արժանի իսկ էին նոքա՝ զրկելոյ 'ի լուսոյ․ և արգելլոյ 'ի խաւարի․ որք արգելականս պահէին զորդիսն քո ։ որովք հանդերձեալ էր անեղծ օրինացն լոյս՝ կենաց աշխարհի պարգևել ։
5 * Զի խորհեալ էին նոքա զողլոյս սրբոցն կոտորել․ և ընդ միոյ մանկան ընկեցիկ եղելոյ․ և ապրեցելոյ 'ի յանդիմանութի․ զնց զբազմութի որդւոցն սատակեցեր ։ և

պարգևէին

Ելից․ 1.15. և 2. 3.

Ելից․ 14.27.

առ հասարակ կորուսեր 'ի ջուրս սաստիկս ։ *6 Այն գիշեր յառաջագոյն ծանօթ եղեւ հարցն մերոց ։ զի հաստատութբ տեսեալ յերդմունս յորս հաւատացին, խրախամիտ լինիցին ։ *7 Ընկալաւ թն եղեւ ժողովրդեան քում արդարոյն փրկութի . եւ թշնամեացն կորուստ ։ *8 Զի որովք պատժեցեր զհակառակորդսն . նովին զմեզ առ քեզ կոչեալ փառաւորեցեր ։ *9 Զի գաղտ զոհէին որդիք ազնուացն . եւ զսրբութեանն օրէնս միաբանութբ ուխտէին ։ ըստ նմին օրինակի բարութեցն՝ եւ վշտաց սրբոցն հաղորդակիցք լինէին ։ անդ հարք քաղցրայուցանէին զօրհնութի ։ *10 Նա աւանիկ հակառակ ձայնատու էր՝ անմիաբան բարբառ թշնամեացն ։ եւ ձայն ողորմելանէր մանկանց ողբացելոց ։ *11 ‖ Նոյն օրինակ ծառայք հանդերձ տերամբք տանջեալք ։ եւ խառնիճաղանճ ընդ թագաւորին զնոյնս չարչարեալ ։ *12 Միքին առ հասարակ՝ միով անուամբ մահու ունէին մեռեալս անհամարս . զի եւ թաղել անգամ չէին բաւական կենդանիքն ։ քանզի 'ի միում վայրկենի պատուական ազգն նց սատակիւր ։ *13 Զի ամին չհաւատային վասն կախարդութեցն ։ բայց 'ի սատակելոյ անդրանկացն՝ խոստովանեցան ժողովուրդ քո լինել ։ *14 Մինչդեռ խաղաղութեն պատեալ էր զամ . եւ այն ինչ գիշերն իւրով արագութբ ընդմիջէր ։ *15 Ամենազօր բանն քո յերկնից յաթոռոյ արքունեաց սաստիկ պատերազմող՝ 'ի մէջ սատակմամբ երկրին հասանէր ։ *16 Սուսեր պողովատիկ զանաշառ քո հրամանդ բերեալ ։ եւ 'ի մէջ անցեալ զամենեսեան լնոյր մահուամբ ։ անդ առ երկնիւք քերէր . եւ այսր յերկիր հասանէր ։ *17 Յայնժամ՝ ցնորք վաղվաղակի անհնարինք երազոց խռովեցուցանէին զնոսա ։ եւ արհաւիրք անկարծք 'ի վր հասանէին ։ *18 Այլք այլուր անկեալ կիսամահ ։ վասն որոյ պատճառանաց մեռանէին՝ յայտ առնէր ։ *19 Զի երազոյն խռովեցուցեալ զնս . զնոյն յառաջագոյն գուշակէին . զի մի յանդէտս, վասն որոյ չարաչարն տանջէին՝ կորնչէին ։ *20 Մատեաւ եւ յարդարսն երբեմն փորձ մահու . եւ սատակումն բազմութեն եղեւ յանապատի . այլ ոչ ընդ երկար կալաւ բարկութին ։ *21 ‖ Զի փութացեալ այրն անարատ՝ մարտուցեալ 'ի կռիւ . իւրով պաշտամամբ զինուն . աղօթիւք եւ խնկօք ուղերձեալ զքաւութին . եկաց ընդդէմ բարկութեն . եւ արար զվախճան հարուա-

‖ Ելից. 12. 30.

[illegible]

‖ Թուոց 16. 46.

22 ծոցն ։ *Յաղթ արարեալ . թէ ծառայ քո յաղթեաց բազմաց ամբոխից ։ ոչ զօրութբ մարմնոյ՝ եւ ոչ զինուց ազդեցութբ . այլ բանիւ զտանջիչսն հնազանդեաց . զերդմունս՝ եւ զդաշինս հարցն յիշատակեալ ։ *23 Զի շեղջաշեղջ դիականց անկելոց առ միմեանս կացեալ 'ի մէջ դադարեցոյց զբարկութին ։ եւ էհերձ զճանապարհ 'ի մէջ կենդանեաց եւ մեռելոց ։ *24 ‖ Քանզի 'ի պճնեալ հանդերձին էր ամ զարդն . եւ փառք հարցն 'ի չորեքկարգեան ականս քանդակեալս . եւ մեծութի քո 'ի վր թագի գլխոյ նորա ։ *25 Յայնցանէ խորշեցաւ սատակիչն . եւ 'ի սոցունց զարհուրեցաւ ։ զի բաւական էր միայն փորձ բարկութեն ։

‖ Ելից. 28. 4.

## ԳԼ. ԺԹ.

1 Բայց ամբարշտացն մինչեւ 'ի սպառ եհաս 'ի վր անողորմ սրտմտութի ։ քանզի գիտէր նց եւ զհանդերձեալսն ։ *2 Զի նոքա դարձցին 'ի գնալ . եւ տագնապաւ յուղարկեալ զնոսա՝ հալածեսցեն զղջացեալք ։ *3 ‖ Զի մինչդեռ տակաւին 'ի ձեռս իւրեանց ունէին զսուգս իւրեանց . եւ ճչէին առ գերեզմանօք մեռելոցն ։ միւս եւս խորհուրդ անմտութե յինքեանս կորզեցին . եւ զորս աղաչէին՝ եւ հանէին, նոցին որպէս փախստէից հետամուտ լինէին ։ *4 Զի ձգէր զնս արժանն յայնր վախճանի տագնապ . եւ զանցելոց անցիցն ընդ նոսա անյիշատակութի 'ի միտս արկանէին . զի զմնացեալսն տանջանաց լցցեն զպատիժս ։ *5 Եւ քո ժողովուրդն զնորասքանչ ճանապարհ գնասցեն ։ եւ նոքա զնորանշան մահ գտանիցեն ։ *6 Զի ամ արարած՝ յիւրաքանչ իւր կարգի վերստին նորոգիւր՝ սպասաւորեալ քոյոց հրամանաց ։ զի քո որդիք պահեսցին անփորձ ։ *7 Ամպն ծածկեաց զբանակն . զի 'ի ջրոյն ցամաքութե . որ 'ի ներքոյ կայր՝ յատակք երկրին երեւէին . եւ 'ի կարմիր ծովուն ճանապարհ անխափան՝ եւ դաշտ ծաղկաբեր 'ի պտուտից բռնութեն ։ *8 Ընդ որոյ միաբանութ անցանէին . որք քովդ ձեռամբդ ծածկեալք էին ։ տեսեալ զգործս քո սքանչելիս ։ *9 Զի որպէս զձիս ճախրեցան . եւ իբրեւ զգառինս խայտացին . օրհնել զքեզ Տր . որ փրկեցեր զնս ։ *10 Քանզի յիշէին տակաւին զիրսն . որք 'ի պանդխտութե իւրեանց, թէ զիա՞րդ փոխանակ ծննդեան անասնոց՝ բղխեաց երկիր նոցա զմուն ։ եւ փոխանակ ջրականացն՝ բղխեաց գետն զբազմութի գորտոց ։

‖ Ելից. 14. 8. եւ 9.

ծածկէր

*Ապա

11 * Ապա յետոյ տեսին զնոր ծնունդ թռչնոց ։ յորժամ ցանկութեամբ անձնացեալք խնդրէին խորտիկս կերակրոց ։ 12 * Զի 'ի մխիթարութիւն ել նոցա լորամարգին 'ի ծովէն ։ և պատիժք 'ի վ(երայ) մեղաւորաց հասին ։ ոչ առանց յառաջագոյն եղելոյ նշանացն բռնութեան . հրայրեաց բարկութեանց ։ քանզի յիրաւի չարչարեցան ըստ իւրեանց չարութեանցն ։ զի չարաչար օտարատեցութիւն հնարեցան ։ 13 * Զի ոմանք զանծանօթս եկեալսն ոչ ընդունէին ։ և նոքա զերախտաւոր հիւրսն ծառայեցուցանէին ։ 14 * Եւ ո՛չ այսչափ միայն . այլ և այցելութիւն եղիցի նոցա ։ քանզի ատելութեամբ ընդունէին զօտարսն ։ 15 * Բայց նոքա խնդութեամբ տօնակիցք ընկալեալք ընդ վաղուց՝ ընդ նոյին արդարոյն վայելէին ։ զի անհնարին ցաւօք չարչարեցին զնոսա ։ 16 * Հարան շլացութեամբ իբրև զայնոսիկ . որք առ դուրս արդարոյն ։ յորժամ՝ անծնշուլ անբաւ խաւարաւն պատեցան , իւրաքանչիւրոք զիւրոյ դրացն զելս խնդրէր ։ 17 * Զի վասն նոցա բնութիւք պատշաճեալք . որպէս սաղմոսարանաւ՝ իւրաքանչիւր ձայնիւ յարմարեալք . զիւրաքանչիւր անուն նուագէին ։ յամժամ 'ի նմին ձայնի հաստատեալք . զոր է ճշմարտիւ կարծել՝ յեղելոցն տեսլենէ ։ 18 * Զի ցամաքայինքն 'ի ջուրսն փոփոխէին ։ և լողակք՝ յերկիր դառնային ։ 19 * Հուր ջրոյ յաղթէր իւրով զօրութեամբ ։ և ջուր զիւր շիջուցիչ բնութիւն մոռանայր ։ 20 * Եւ բոցք դարձեալ՝ զդիւրածախ անասնոց զմարմինս ոչ թառամեցուցանէին 'ի շրջելն իւրեանց ։ և ոչ հալէին զսառնակերպ դիւրահալ զազգ անուշակ կերակրոց ։ զի յամենայն բարձրացուցեր զժողովուրդս քո , և փառաւորեցեր ։ և ոչ անտես արարեր յամենայն ժամանակի . և յամենայն տեղիս . քով պաշտպանութեամբ Տր ։

# ԱՌ ԷԿՂԷՍԻԱՍՏԻԿՈՍՆ ։

## ԱՅՍԷ ԺՈՂՈՎՈՂ . ՅԵՍՈՒԱՅ ՈՐԴԻՈՅ ՍԻՐԱՔԱՅ

## ԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ։

Բազմաց մեզ և մեծամեծաց . 'ի ձեռն օրինաց և մարգարէից . այլոց և որք հետևեցան նոցա , իմաստութեանն բարգաւաճեցան ։ Վասն որոյ պարտ է գովել զԻսրայէլեայսն ուսման և իմաստութեան աղագաւ ։ քանզի ոչ միայն զնոսա խօսողս հարկ է գոլ հմտունս . այլև զարտաքինսն կարել՝ և զօրացոյս և զգրողս կրթութեան գոլ ։ Հաւն իմ Յեսու . զի նա որոյ զինքն յանձն ետ առ ամէն ընթերցման օրինաց և մարգարէից՝ և այլոց գրոց . որք մեզ 'ի ծնողաց մերոց աւանդեցան ։ Մտեալ և ինքն գրել զայլինս նոցա . որք առ մաքրութիւն և իմաստութիւն պատկանին . զի ցանկացողքն ուսման՝ և նոցա հմտացեալք եղեալք առաւել՝ և առաւել զգօրացեալն հոգւով . և յաւէժ հաստատեսցին առ օրինապահութիւն կենաց ։ Աղաչեմ յորդորեմ զձեզ գալ հանդերձ բարեխնամութեամբ . և ներողամտաբար կրթման զընթերցումս առնել . և զներումն առնել 'ի նոսա , նորա գտանեմք հեղինակ պայոյն իմաստութեան . նուաճեցուցանել ներ զարդարութեան բանից ։ Զի պակասին բայք եբրայականք՝ երբ լեզուն անդրաբերեալք առ այլ լեզու ։ Բայց ոչ միայն այս . այլև ինքն օրէնք . և մարգարէք . այլոց և գրոց . ոչ սակաւ ունին զզանազանութիւն՝ յորժամ ներ ինքեանց ասին ։ Զի նութերորդամ և երեսներորդ ամի ժամանակօքն Պտղոմեայ Եւերգետայ թագաւորի ։ զինքն որոյ եկի յԵգիպտոս . և եգի բազմաց ամենայն եղէ անդ . գտի անդ գրեանս թողեալս՝ ոչ փոքունս՝ և ոչ անգտանելիս ուսմունս ։ Վասն որոյ բարի և հարկաւոր վարկայ ինքնին զայլինս առածել զյօժարութիւն և զջանադրութիւն թարգմանելոյ զգիրս զայս ։ Եւ տքնութեամբ յոլովիւք առաւելք զմտադրութիւն ներ բազմատոկ ժամանակի . առ այնոսիկ՝ որք առ աստուածն հասուցանեն , զմանտեան զայս տալ՝ և այնոցիկ որք կամին մտօք նկատել և առնել՝ զհարդ պիտոյ իցէ ներքնաբար նկատել և գել զբարս . որք ըստ օրինի Տն յառաջադուանել . բեալք իցեն զկեանս կառավարել ։

# ԵԿԿՂԵՍԻԱՍՏԻԿՈՍ:

Գլուխ Առաջիններորդ:

1 Ամենայն իմաստութիւն 'ի Տեառնէ է. և ընդ նմա է միշտ. և է յառաջ քան զյաւիտեանս: 2 * Զաւազ ծովու. և զշիթս անձրևաց. և զաւուրս ժամանակաց ո՞ թուեսցէ: զբարձրութիւն երկնի. և զլայնութիւն երկրի. և զխորութիւն անդնդոց ո՞ չափեսցէ: 3 * Զիմաստութիւն Տեառն նախընթաց ամենայնի ո՞վ հետազօտեսցէ: 4 * Յառաջ քան զամենայն հաստատեցաւ իմաստութիւն. և զգօնութիւն հանճարոյ յաւիտենից: 5 * Աղբիւր իմաստութեան բանն Տեառն 'ի բարձունս. և մուտք նորա պատուիրանք մշտնջենաւոր: 6 * Արմատ իմաստութեան ո՞ւմ յայտնեցաւ. և զհնարագիտութիւնս նորա ո՞վ ծանեաւ: 7 * Խրատ իմաստութեան որո՞յ յայտ եղև, և բացայայտ. և զբազմապատկութիւն մտաց նորա ո՞վ իմացաւ: 8 * Մի է բարձրեալն Արարիչ ամենակար. և թագաւոր կարող. ահեղ յոյժ. որ նստի 'ի վերայ աթոռոյ իւրոյ. և իշխող Աստուած: 9 * Ինքն ստեղծ զնա հոգւովս սրբով. և ետես. և թուեաց. և չափեաց: 10 * Եւ սփռեաց զնա 'ի վերայ ամենայն իւրոց գործոց. և 'ի վերայ ամենայն մարմնոյ ըստ պարգևաց իւրոց. և բաշխեաց զնա սիրողաց իւրոց:

11 * Երկիւղ Տեառն փառք և պարծանք. և խնդութիւն. և պսակ ցնծութեան: 12 * Երկիւղ Տեառն ուրախ առնէ զսիրտ. զշնորհ և զխնդութիւն և զերկայն աւուրս մատուցանէ: 13 * Որ երկնչի 'ի Տեառնէ, զբարիս գտցէ 'ի վախճանի. և յաւուր կատարածի իւրոյ օրհնեսցի: 14 * Իղձ Տեառն պատուելի իմաստութիւն: 15 * Սակայն որոց երևեսցի 'ի տեսլեան. ըղձան նմա տեսլեամբ. և 'ի ծանօթութիւն մեծամեծաց իւրոց: 16 * Սկիզբն զգօնութեան երկիւղ Տեառն: և ընդ հաւատացելոյ յարգանդի ստեղծաւ: ընդ ընտրելոց զաւակաց ընթանայ. և ընդ արդարոց 17 և հաւատարմաց ծանօթանայ: * Երկիւղ Տեառն գիտութեան կրօնաւորութիւն: 18 * Կարգաւորութիւն պահեսցէ՝ և արդարացուսցէ զսիրտ. զքաղցրութիւն և 19 զուրախութիւն տացէ: * Երկիւղածի Տեառն բարւոք եղիցի. և յաւուրս կատարածի իւրոյ օրհնեսցի: 20 * Լրութիւն իմաստութեան է երկնչել յԱստուծոյ. և լրութիւն 21 յարմտեաց նորա: * Զամպտուղ նորա լցուսցէ 'ի տոհմականաց. և ընդունելի 22 'ի գանձուց նորա: * Պսակ իմաստութեան երկիւղ Տեառն. ծաղկեցուցանող խաղաղութեան. 23 և պտղոյ փրկութեան: * Եւ ետես՝ և թուեաց զնա. երկաքանչիւրքն 24 են պարգևք Աստուծոյ: * Զգիտութիւն և զիմացուած հանճարոյ իմաստութիւն յայտնեսցէ. և զփառս ունողաց զնա 25 բարձրացուսցանէ: * Արմատ իմաստութեան է երկնչել 'ի Տեառնէ. և ոստք նորա 26 երկայնաձիգք: * 'Ի գանձս իմաստութեան իմացուած՝ և գիտութեան երկիւղածութիւն: իսկ գարշութիւն 'ի մեղաւորաց 27 իմաստութիւն: * Երկիւղ Տեառն աղարտէ 28 զմեղս: * Զի որ առանց երկիւղի է. ոչ կարիցէ արդարանալ: զի բարկութիւն ցասման նորա կործանումն նորա է: 29 * Մինչև 'ի ժամանակն տևէ համբերողն՝ և յետոյ վերադարձութիւն քաղցրութեան: 30 * Բարի զգացումն մինչև 'ի ժամանակն թաքուցանէ զբանս նորա. և շրթունք բազմաց պատմեսցեն զգացումն նորա: 31 * Ներ գանձուց իմաստութեան 32 նշանակութիւն խրատու: * Իսկ գարշութիւն 'ի մեղաւորէ պաշտօն առ Աստուած: 33 * Որդեակ՝ ցանկացեալ իմաստութեան. պահեա զարդարութիւն. և Տէր պարգևեսցէ զնա քեզ: 34 * Զի իմաստութիւն և

3 Թագ. 3. 9. և 4. 29.

Սաղմ. 110. 10. Առակ. 1. 7.

և զգօնութիւն երկիւղ Տեառն է. և որինչ հաճոյ է նմա: *Հաւատ՝ և համեստութիւն լցուսցէ զգանձս նորա: 35
*Մի՛ լինիցիս անհաւատ երկիւղի Տեառն. և մի՛ մերձենայցես առ նա երկմտի սրտիւ: 36
*Մի՛ կեղծաւորիր առաջի մարդկան. և մի՛ գայթագղեցիս շրթամբք քովք: 37
*Զգուշացի՛ր ՚ի նոցանէ. մի՛ գուցէ անկցիս. և առածցես անձին քոյ զանպատուութիւն: 38
*Եւ բացայայտեսցէ Տէր զծածուկս քո. և ՚ի մէջ ժողովարանի կործանեսցէ զքեզ: 39
*Վասնզի մերձեցար չարաբարոյութեամբ առ Տէր. և սիրտ քո լի է նենգութեամբ. և խորամանկութեամբ: 40

## ԳԼ. Բ.

Որդեակ՝ եթէ մերձենաս ծառայել Տեառն, կաց յարդարութեան. և յերկիւղի. և պատրաստեա՛ զանձն քո ՚ի փորձութեան: 1
*Ուղղեա՛ զսիրտ քո՝ և տո՛ւր. խոնարհեցո՛ զունկն քո՝ և ընկա՛լ զբանս հանճարոյ. և մի՛ աճապարեսցես ՚ի ժամանակի անյաջողութեան: 2
*Տևեա՛ համբերութեամբ Տեառն. լծակցի՛ր Տեառն, և համբերեա՛. զի բազմասջիցին ՚ի վախճանի կեանք քո: 3
*Զամենայն որ գայ ՚ի վերայ քո, ընկա՛լ. և ՚ի ցաւս տո՛ւր. և ՚ի նուաստութեան քում զհամբերութիւն ստացի՛ր: 4
*Զի ՚ի հուր հրոյ փորձի ոսկի և արծաթ. իսկ մարդիկք ընդունելիք ՚ի բովում խոնարհութեան: 5
*Հաւատա՛ ՚ի Տէր. և ընձայեսցէ քեզ. և ուղղի՛ղ կալջի՛ր զճանապարհս քո. և յուսասջի՛ր ՚ի նա: 6
*Երկիւղածք Տեառն ակն կալջիք ողորմութեան նորա. և մի՛ խոտորիք ՚ի նմանէ. զի մի՛ կործանեսջիք: 7
*Որք երկնչիք ՚ի Տեառնէ՝ հաւատացէ՛ք ՚ի նա. և ոչ ունայնասցին վարձք ձեր: 8
*Երկիւղածք Տեառն յուսացարո՛ւք ՚ի նա. և ՚ի զուարճութիւն եկեսցէ ձեզ ողորմութիւն: 9
*Որք երկնչիք ՚ի Տեառնէ՝ սիրեցէ՛ք զնա. և լուսաւորեսցին սիրտք ձեր: 10
*Հայեցարո՛ւք որդիք ՚ի ծնունդս մարդկան. և գիտասջի՛ք՝ զի ոչ ոք յուսացաւ ՚ի Տէր. և յամօթ եղև: 11
*Զի ո՞վ եկաց ՚ի պատուիրանս նորա, և ՚ի բաց թողաւ. կամ ո՞վ կարդաց առ նա, և անտես արար զնա: 12
*Զի գթած և ողորմած է Տէր. և թողու յաւուր տառապանաց զմեղս. և հովանի է ամենեցուն խնդրողաց իւրոց ճշմարտութեամբ: 13
*Վա՜յ երկմտից. և շրթանց անօրինաց՝ և ձեռաց չարագործաց՝ և մեղաւորի, որ շրջիցի յերկրի երկոքումբք ճանապարհօք: 14
*Վա՜յ լքելոց սրտիւք. որք ոչ հաւատան Տեառն. և վասն այնորիկ ոչ պահպանիցին ՚ի նմանէ: 15
*Վա՜յ այնոցիկ՝ որք կորուսին զհամբե- 16

րութիւն. և որք ՚ի բաց թողին զճանապարհս ուղիղս. և դարձան ՚ի ճանապարհս թիւրս: 17
*Եւ զի՞նչ արասցեն յորժամ նկատել սկսանիցի Տէր: 18
*Երկիւղածք Տեառն ոչ լինիցին անհնազանդք բանից նորա. և որք սիրեն զնա. պահեսցեն զճանապարհս նորա: 19
*Երկիւղածք Տեառն խնդրեսցեն զհաճոյսն նորա. և որք սիրեն զնա՝ լցցին յօրինաց նորա: 20
*Երկիւղածք Տեառն պատրաստեսցեն զսիրտս իւրեանց. և առաջի նորա սրբեսցեն զհոգիս իւրեանց: 21
*Երկիւղածք Տեառն պահեսցեն զպատուիրանս նորա. և սպասեսցեն մինչև ՚ի ներանկատութիւն նորա: 22
*Եւ ասասցեն՝ եթէ ոչ զղջասցուք, անկցուք ՚ի ձեռս Տեառն, և ոչ ՚ի ձեռս մարդկան: 23
*Զի ըստ մեծութեան նորա. այսպէս և ողորմութիւն նորա ընդ ինքեան է:

## ԳԼ. Գ.

1 Որդւոց իմաստնոյ՝ եկեղեցի արդարոց. և ազգ նոցա հնազանդութիւն, և սէր:
2 *Զպատուիրանս հօր լուարո՛ւք որդիք. և այնպէս արարէ՛ք՝ զի կեցջիք:
3 *Զի Տէր զհայր պատուեաց որդւովք. և զիրաւունս մօր խնդրելով հաստատեաց յորդիս:
4 *Որ սիրէ զՏէր՝ աղօթէ վասն մեղաց. և պարունակէ զինքն ՚ի նոսա. և յաղօթս աւուրց ունկնդիր լինի:
5 *Եւ որպէս որ գանձէ. այնպէս և որ պատուէ զմայր իւր:
6 *Որ պատուէ զհայր իւր՝ զուարճասցի որդւովք. և յաւուր աղօթից իւրոց լսելի լիցի:
7 *Որ պատուէ զհայր իւր. կեցցէ կենօք երկայնաւուրս. և որ հնազանդի հօր՝ զուարճացուսցէ զմայր:
8 *Որ երկնչի ՚ի Տեառնէ՝ պատուէ զծնօղս. և իբրև տերանց ծառայեսցէ նոցա՝ որք զինքն սերեցին:
9 *Գործով և ՚ի խօսս և յամենայն ժուժկալութեան պատուեա՛ զհայր:
10 *Զի ՚ի վերայ եկեսցէ քեզ օրհնութիւն ՚ի նմանէ. և օրհնութիւն նորա մինչև ՚ի վախճան մնասցէ:
11 *Օրհնութիւն հօր հաստատէ զտունս որդւոց. իսկ անէծք մօր խախտեն զհիմունս:
12 *Մի՛ պարծիր յարհամարհանս հօր քոյ. զի ոչ է
13 քեզ փառք անարգանք նորա: *Զի փառք մարդոյ ՚ի մեծարանաց հօր իւրոյ. և նախատինք որդւոյ, հայր թարց պատուոյ:
14 *Որդեա՛կ զօրավիգն լեր ծերութեան հօր քոյ. և մի՛ տրտմեցուցանես
15 զնա ՚ի կեանս նորա: *Եւ եթէ պակասեսցի զգայարանաւ՝ զներողութիւն տուր. զի ողորմութիւն հօր ոչ եղիցի ՚ի մոռաց
16 ման: *Զի սակս մեղանաց մօր ընդ
17 դիմանոյ քեզ բարի: *Եւ յարդարութեան շինեսցի քեզ. և յաւուր նեղութեան

յի-

յիշատակեսցի քեզ ։ 18 * Առաւել վատահամբաւ է, որ թողու զհայր ։ և անիծեալ է յՏ՟է՝ որ դառնացուցանէ զմայր ։ 19 * Որդեակ հեզութե՟ զգործս քո կատարեա՛ ։ և ՚ի վերայ մարդկան զփառս սիրեսցես ։ 20 * ‖Որչափ մեծ ես՝ խոնարհ կալ զքեզ քան զամենեսեան ։ և առաջի Տ՟ն գտցես զշնորհս ։ 21 * Քանզի մեծ զօրութի՟ն Տ՟ն միայնոյ՝ և ՚ի խոնարհից պատուի ։ 22 * ‖Զբարձրագոյնս քան զքեզ մի՛ յուզեսցես ։ և զօրեղագոյնս քան զքեզ մի՛ զննեսցես ։ այլ զորինչ հրամայեցաւ քեզ Տ՟ծ ։ զայն խորհեա՛ց միշտ ։ և ՚ի բազում գործս նր՟ մի՛ լինիցիս հետաքրքիր ։ 23 * Զի ոչ է քեզ հարկաւոր ։ զայնս, որք ծածկեալք են, տեսանել աչօք քովք ։ 24 * Ի վլ՟ն ունայնից իրաց մի՛ լինիր զննող բազմապատկաբար ։ և ՚ի գործս նորա յոլովս ոչ եղիցիս հետաքրքիր ։ 25 * Զի բազմապատիկք քան զզգացումն մարդկան ցուցեալք են քեզ ։ 26 * Զի զյոլովս գայթագղեցոյց վերանկատումն ։ և ունայնութիւն բուռն եհար զգայութիւն նոցա ։ 27 * Սիրտ կարծր ունիցի չարաբար ներվերջնում ։ որ սիրէ զկորուստ ։ ՚ի նմին կորիցէ ։ 28 * Սիրտ ընթացող յերկուս ճանապարհս, ոչ ունիցի զբարեդիպուածուն ։ և թիւրն սրտիւ ՚ի նոսին գայթագղեսցի ։ 29 * Սիրտ չարայոյզ ծանրասցի ցաւօք ։ և մեղաւորն յաւելցի ՚ի մեղանչել ։ 30 * Ժողովարանի ամբարշտաց ոչ եղիցի բժշկութիւն ։ զի տունկ մեղաց արմատասցի ՚ի նմ՟ ։ և ո՛չ իմասցի ։ 31 * Սիրտ իմաստնոյ իմանի իմաստութե՟ ։ և ունկն բարի լուիցէ հանդերձ ամ՟ն ցանկութե՟ զիմաստութի՟ն ։ 32 * Իմաստուն սիրտ և իմացուն ՚ի բաց քարշեսցէ զինքն ՚ի մեղաց ։ և ներ գործոց արդարութեան բարեբախտեալ ունիցի ։ 33 * ‖Զհուր վառեալ շիջուցանէ ջուր ։ և ողորմութիւն ընդդիմանայ մեղաց ։ 34 * Եւ Տ՟ծ ակնարկող է այնորիկ ։ որ հատուցանէ զգոհութիւն ։ յիշէ զնա ՚ի յետնում ։ և ՚ի ժամանակի գլորման իւրոյ գտցէ զհաստատութի՟ն ։

Margin: և ՚ի վեր ջան ըղ փառս մարդկան սիրեսցես — ‖Փիլիպ. 2. 3. — ‖Առակ. 25. 27. — որ սիրէ զկորուստն — ‖Դան. 4. 24.

## Գլ. Դ.

1 Որդեակ ‖զողորմութիւն աղքատի մի՛ զլասցես ։ և զաչս քո մի՛ դարձուցանես յաղքատէ ։ 2 * Զանձն քաղցեալ մի՛ անտես արասցես ։ և մի՛ դառնացուսցես զաղքատն ՚ի տկարութեան իւրում ։ 3 * Զսիրտ տառապելոյ մի՛ զայրացուցաներ ։ և մի՛ յապաղեր զտուրս կարօտելոյն ։ 4 * Զաղաչանս վշտացելոյ մի՛ ՚ի բաց ձգեսցես ։ և մի՛ դարձուցես զերեսս քո ՚ի կարօտելոյ ։ 5 * Ի չքաւորէ մի՛ դարձուցես զաչս քո վասն բարկութեան ։ և մի՛ թողցես խնդրողաց զքեզ զկնի անիծանել ։ 6 * Զի յորժամ դառնացեալ մտօք անիծանէ զքեզ ։ լսելիք լինին աղօթք նորա ։ և լուիցէ նմա ։ որ արար զնա ։ 7 * Ժողովոյ աղքատաց քաղցրաբանս զքեզ արասցես ։ և իշխանաց խոնարհեցո՛ զանձն քո ։ և մեծացուսցես խոնարհութե՟ զգլուխ քո ։ 8 * Խոնարհեցո՛ աղքատի առանց տրտմութեան զունկն քո ։ և հատո՛ զպարտ քո ։ և պատասխանեա՛ նմա խաղաղարարութե՟ ՚ի հեզութեան ։ 9 * Փրկեա՛ զզրկեալն ՚ի ձեռաց զրկողաց ։ և մի՛ կարծրաբար զայրասցիս յանձին քում ։ 10 * Ի դատել ժողովրդեան լե՛ր ողորմասիրտ իբրև զհայր ։ և փոխանակ առն մօր նոցա ։ 11 * Եւ եղիցիս դու իբրև որդի բարձրելոյն հնազանդ ։ և ողորմեսցի քեզ առաւել քան զմայր ։ 12 * Իմաստութիւն որդւոց իւրոց զկեանս ներաշնչեաց ։ և ընկալաւ զխնդրօղս իւր ։ և նախընթաց եղև ՚ի կեանս արդարութեան ։ 13 * Եւ որ զնա սիրէ ։ սիրէ զկեանս ։ և որ կանխէ առ նա ։ գիրկս արկանէ զհաճոյիւք նորա ։ 14 * Որք կալցին զնա ։ զկեանս ժառանգեսցեն ։ և ուր՝ ՚ի ներս մտցէ՝ 15 օրհնեսցէ զնա Տ՟ծ ։ * Որք ծառայեն նմա, հետևօղք եղիցին սրբոյ ։ և զնմ՟, 16 որք սիրեն զնա, սիրէ Տ՟ծ ։ * Որ լսէ նմա ։ դատեսցէ զհեթանոսս ։ և որ յառեալ հայի ՚ի նա, մնասցէ յուսով ։ 17 * Թէ հաւատասցէ նմա ։ ժառանգեսցէ զնա ։ և եղիցին ՚ի հաստատութեան արարածք նորա ։ 18 * Քանզի ՚ի փորձութեան շրջի ընդ նմա՝ և ներ նախկնաց 19 ընտրեաց զնա ։ * Զերկիւղ ։ և զկասկած ։ և զփորձութիւն ներածիցէ ՚ի վերայ նորա ։ և խոշտանգեսցէ զնա ՚ի նեղութեան ուսման իւրոյ ։ մինչև հետամուտ լիցի նմա ներխոկացմանց իւրոց ։ 20 և հաւատասցէ անձին նորա ։ * Եւ հաստատեսցէ զնա ։ և զընթացս ուղիղս առածցէ առ նա ։ և ուրախ արասցէ զնա ։ 21 * Եւ մերկացուսցէ զծածուկս իւր նմա ։ և գանձեսցէ ՚ի վ՟ր նր՟ զգիտութի՟ն ։ և զմակացութի՟ն արդարութեան ։ 22 * Իսկ եթէ մոլորեսցի ։ ՚ի բաց թողցէ զնա ։ և մատնեսցէ զնա ՚ի ձեռս 23 թշնամեաց իւրոյ ։ * Որդեակ պահեա՛ զժամանակ ։ և խորշեա՛ց ՚ի չարէ ։ 24 * Վասն անձին քոյ մի՛ կրեր զամօթ 25 առնել զճշմարիտն ։ * Զի է ամօթ ածող զմեղս ։ և է ամօթ ածող 26 զփառս և զշնորհս ։ * Մի՛ առնուցուս ակն ընդդէմ երեսաց քոց ։ և մի՛ ընդ

դէմ

Margin: ‖Տոբ. 4. 7.

դէմ անձին քոյ զատութի ։ *Մի պատ 27
կառեցուցես զմերձաւորս քո նանկ_
ման իւրում։ *Մի արգելուր զբան 'ի 28
ժամանակի փրկութե ։ մի թաքուցա_
ներ զիմաստութի քո 'ի գեղեցկութե
իւրում։ *Զի ներ լեզուաւ իմաստ 29
նուն արժանաբար ճանաչի ։ և զգօ_
նութի ։ և գիտութի ։ և ուսումն ներ
բանում զգօնացելոյ ։ և հաստատու
ներ գործոց արդարութե ։ *Մի ընդ 30
դէմ ասասցես բանի ճշմարտութե
ամենևիմբ եղանակաւ ։ և յաղագս սուտ_
թե անուսումնութե քոյ ամաչեա։
*Մի ամաչեսցես խոստովան լինել 31
զմեղս քո ։ և մի ներդևեսցես զքեզ ումի
մարդոյ վասն մեղաց ։ *Մի ընդդի_ 32
մանար ընդդէմ հզօրի ։ և մի ջանաս_
ցես ընդդէմ բաղխման գետոյ ։
*Մակս արդարութե մարտեա վն ան 33
ձին քոյ ։ և մինչև 'ի մահ ճգնեաց սակս
արդարութե ։ և ՏԾ պատերազմի փո
խանակ քո ընդ թշնամիս քո ։ *Մի 34
լինիր շուտափոյթ լեզուաւ քով ։ և
անշահ և լքեալ 'ի գործս քո ։ *Մի լի 35
նիր իբրև առիւծ 'ի տան քոյ ։ կործա_
նող բարեկամի քոյ, և օգտող հնազան
դելոց քոց ։ *Մի լիցի ձգեալ ձեռն քո 36
առ յառ՝ և առ 'ի տալն կարկամեալ ։

## Գլ. Ե ։

Մի ձկտիր առ ստացուածս անի_ 1
րաւս ։ և մի ասասցես՝ է ինձ բա
ւական 'ի կեանս ։ զի ոչինչ օգուտ լիցի
'ի ժամանակի վրէժխնդրութե և պա
տերազմի ։ *Մի զհետ երթար զօրու 2
թե քով ցանկութե սրտի քոյ ։ *և մի 3
ասասցես՝ զիարդ կարացի ։ կամ ով ոք
զիս նուաճեսցէ վասն արարից իմոց ։
զի ՏԾ վրէժխնդիր վրէժխնդրեսցէ ։
*Մի ասասցես մեղայ ։ և զինչ ինձ պա 4
տահեցաւ տրտմական ։ զի բարձրեալն
է երկայնամիտ հատուցանօղ ։ *Վասն 5
քաւութե մեղաց մի լինիր թարց տրտ_
մութե ։ և մի յաւելուցուս զմեղս 'ի
վր մեղաց ։ *Եւ մի ասասցես ։ գթու 6
թի ՏԾ մեծ է ։ բազմութեան մեղաց
իմոց ողորմեսցի ։ *‖ Զի ողորմութի 7
և բարկութի յայնմանէ փութով մեր
ձաւորին ։ և 'ի մեղաւորս ականարկէ
բարկութի նորա ։ *Մի յապաղեր 8
դառնալ առ Տր ։ և մի ձգեր յօրէ յօր ։
*Զի յանկարծակի եկեսցէ բարկու 9
թի նր ։ և 'ի ժամանակի վրէժխնդ_
րութե քայքայեսցէ զքեզ ։ *‖ Մի 10
լինիր զբաղեալ 'ի փարթամութիւնս
անիրաւս ։ զի ոչինչ օգնեսցեն քեզ
յաւուր պատերազմի և վրէժխնդրու
թե ։ *Մի հողմակոծեսցես զքեզ ա_ 11

ձէ

‖ Առակ. 10. 6.

‖ Առակ. 11. 28.

մենայնի հողմով ։ և մի գնասցես յամ
ճանապարհ ։ զի այսպէս մեղաւոր փոր
12 ձի յերկլեզուութե ։ *Եղեր հաստա_
տուն 'ի ճանապարհի Տն ։ և 'ի ճշմար_
տութե զգօնութե քոյ և իմաստութե ։
և հետևեսցի քեզ բան խաղաղութե
13 և արդարութե ։ *Եղեր հեզ առ 'ի լսել
զբան ։ զի իմասցիս, և համբերձ իմաս
տութե արտաբերեսցես զպատասխա
14 նի ճշմարիտ ։ *Եթէ գոյ քեզ իմաս_
տութի, պատասխանեա մերձաւորին ։
իսկ եթէ ոչ, ափ 'ի բերան լիցիս ։ մի
ըմբռնեսցիս 'ի բանս անզգօնս, և
15 պատկառեսցիս ։ *Պատիւ և փառք 'ի
խօսս զգաստի ։ իսկ լեզու անխոհա_
16 կանի կործանումն է ինքեան ։ *Մի
յորջորջեսցիս բանսարկութեամբ ։ և
լեզուաւ քով մի ըմբռնեսցիս՝ և ամա
17 չեսցես ։ *Զի 'ի վր գողոյ է ամօթ՝
և զղջումն ։ և նշաւակութի չարագոյն
'ի վերայ երկլեզուի ։ իսկ բանսար_
կուի ատելութի և թշնամութիւն և
18 հայհոյութի ։ *Արդարացո զատրուկն ։
և զմեծն նմանապէս ։

## Գլ. Զ ։

1 Մի լինիր վասն բարեկամի թշնա
մի մերձաւորին ։ զի զանախատինս՝
և զթշնամանս ժառանգեսցէ չար ։ և
այն մեղաւոր մախացող և երկլեզու ։
2 *‖ Մի զքեզ հպարտացուցես 'ի խորհ
ման անձին քոյ իբրև զցուլ ։ մի գու_
ցէ լուեսցի զօրութի քո 'ի ձեռն յիմա
3 րութե ։ *և զտերևս քո կերիցէ ։ և
զպտուղս քո կորուսցէ ։ և թողցիս
իբրև փայտ դօսացեալ յանապատի ։
4 *Զի անձն չարայոյզ ցրուեսցէ՝ որ
ունի զինքն ։ և յուրախութի թշնամեաց
տայ զայն ։ և առբերէ 'ի բաժին ամ
5 բարշտաց ։ *Բան քաղցր բազմապատ
կէ զբարեկամս ։ և կակղացուցանէ ըզ
թշնամիս ։ և լեզու շնորհալի 'ի
բարւոք մարդում առատանայ ։
6 *Բազումք խաղաղարարք լիցին քեզ ։
և խորհրդակից լիցի քեզ մի 'ի հազա_
7 րաց ։ *Եթէ ստանաս զբարեկամ, 'ի
փորձութե ստացիր զնա ։ և մի դիւր_
8 աւ հաւատասցես նմա ։ *Զի է բարե
կամ ըստ ժամանակի իւրում ։ և ոչ մնաս_
9 ցէ յաւուր նեղութե ։ *Եւ է բարե_
կամ ։ որ դառնայ 'ի թշնամութի ։ և
է բարեկամ, որ զատելութի և զկագ՝
զաղմուկ և թշնամանս յայտնեսցէ ։
10 *Եւ ևս ընկեր սեղանոյ ։ և ոչ մնասցէ
11 յաւուր հարկաւորութե ։ *Բարե_
կամ թէ մնասցէ ամրացեալ ։ եղիցի
քեզ իբրև զհամահաւասար ։ և 'ի դքա
ցիս քո հաւատարմաբար գործեսցէ ։

‖ Հռով. 12. 16. Փիլիպ. 2. 3.

12 *Թէ խոնարհեցուսցէ զինքն հանդէպ քեզ. եւ յերեսաց քոց թաքուսցէ զինքն. զհամաշունչ ստասցիս զբարեկամութի բարի: 13 *'Ի թշնամեաց քոց զատ կաց. եւ 'ի բարեկամաց զգուշասջի՛ր: 14 *Բարեկամ հաւատարիմ հովանաւորութի հզօր. իսկ որ գտանէ զնա. գտանէ զգանձ: 15 *Բարեկամի հաւատարմի ոչ ինչ է համեմատութի. եւ ոչ է արժանի կշիռ ոսկւոյ եւ արծաթոյ հանդէպ բարութե հաւատոյ նորա: 16 *Բարեկամ հաւատարիմ բժշկականութի կենաց՝ եւ անմահութե: եւ որք երկնչին 'ի Տէ գտցեն զնա: 17 *Որ երկնչի յԱյ՝ հաստա_ րակա՛ ստասցի զբարեկամութի բա րի. զի ըստ նմա եղիցի բարեկամ նր: 18 *Որդեակ, 'ի մանկութե քում ընկա՛լ զուսումն. եւ մինչեւ 'ի ծերութի գտցես զիմաստութի: 19 *Իբրեւ այն, որ վա_ րէ՝ եւ սերմանէ՝ մատի՛ր առ նա. եւ սպա սեա՛ բարեաց պտղոց նորա: 20 *Զի ներ գործումն սակաւիկ մի աշխատես_ ցիս. եւ փութով կերիցես 'ի տոհմա_ կանաց նորա: 21 *Զիա՛րդ կարի դժուա րին է հանճար ոգիտաց մարդոց. եւ ոչ մնասցէ 'ի նմա անմիտն: 22 *Իբրեւ քարի զօրութի փորձառութի լիցի 'ի նոսա. եւ մի՛ յամեսցին 'ի բաց ձգել զնա: 23 *Զի զգօնութի ուսման ըստ անուան նորա է. եւ ոչ է բազմաց յայտնի: իսկ որոց ծանօթացեալ է. ներմնայ մինչեւ 'ի հայեցուածն Այ: 24 *Լո՛ւր ինձ որ_ դեակ՝ եւ ընկա՛լ զխորհուրդս իմացման. եւ մի՛ ի բաց ձգեսցես զխորհուրդ իմ: 25 *Ա՛րկ զոտս քո յոտնակապս նորա. եւ յանուրս նորա զպարանոց քո: 26 *Ան_ թադրեա՛ զուսս քո՝ եւ բա՛րձ զնա. եւ մի՛ ձուլասցիս 'ի շղթայից նորա: 27 *Ամե_ նայնիւ՛ հոգւով քով մատի՛ր առ նա. եւ ամենայնիւ՛ զօրութե քով պահեա՛ զճանապարհս նորա: 28 *Հետազօտեա՛ նմա՝ եւ յայտնեսցի քեզ. եւ պարփակե՛լ մի՛ թողցես զնա: 29 *Զի 'ի վախճանի գտցես զհանգիստ 'ի նմա. եւ շարա_ դարձցի քեզ 'ի զուարճութի: 30 *Ա՛ե ե_ ղիցին ոտնակապք նր 'ի պահպանու_ թի զօրութե՝ եւ խարիսխք առաքինու թե. եւ անուրք նր յաթոռ փառաց: 31 *Զի զեղ կենաց է 'ի նմա. եւ շղթայ նր կապ փրկութե: 32 *Զվերարկու փա ռաց զգեցցիս զնա. եւ զպսակ հնոր_ հաց վերադիցես քեզ: 33 *Որդեակ՝ թէ զգուշասցիս ինձ, ուսցիս. եւ եթէ հա մաձայնեսցես զհոգի քո՝ իմաստուն եղիցիս: 34 *Եթէ խոնարհեցուսցես զունկն քո՝ առընկալցիս զիմացութի. եւ թէ սիրեսցես լսել՝ իմաստուն եղի_ ցիս: 35 *‖Ի՛ եր բազմութեան ծերոց նրբահայեցաց կա՛ց. եւ իմաստութե նոցա 'ի սրտէ շարալծեա՛ց. զի զամ զպատգամս Այ կարասցես լսել. եւ առակք գովութե մի՛ փախիցին 'ի քէն: 36 *Ա՛ե թէ տեսցես զոք հանճարեղական խեա՛ առ նա. եւ զաստիճանս դրաց նր մաշեսցէ ոտն քո: 37 *‖Զմտածութի քո կա՛լ 'ի հրամանս Այ. եւ 'ի պատուի_ րանս նորա առաւելապէս հանապա_ զորդեա՛: եւ նա տացէ քեզ զսիրտ. եւ ցանկութի իմաստութե տացի քեզ:

'ի Վերայ հոտ հո_ տոյ

‖ Մատթ. 8. 9.

‖ Մարկ. 1. 2.

## Գլ. Է.

1 Մի՛ գործեր զչար. եւ զքեզ մի՛ ըմ բռնեսցեն: 2 *Ի բա՛ց լեր յանի րաւէ. եւ մերժեսցին 'ի քէն չարք: 3 *Որդեակ՝ մի՛ սերմաներ զչարիս յա_ կոսս անիրաւութե. եւ մի՛ հնձեսցես 4 զնոսա եօթնպատիկ: *Մի՛ խնդրեր 'ի Տէ զառաջնորդութի. եւ ո՛չ 'ի թա 5 գաւորէ զաթոռ պատուոյ: *‖Մի՛ զքեզ արդարացուսցես առաջի Այ. քանզի ճանաչօղ սրտի ինքն է. եւ հան դէպ թագաւորի մի՛ կամիր տեսանիլ 6 իմաստուն: *Մի՛ խնդրեր լինիլ դա_ տաւոր. եթէ ոչ կարասցես զօրութբ սաստել անիրաւաց. մի՛ գուցէ զանգի տիցես յերեսաց հզօրի. եւ դնիցես ըզ գայթագղութիւն յիրաւունս քո: 7 *Մի՛ մեղանչեսցես 'ի բազմութի քա ղաքի. եւ մի՛ զքեզ արկցես 'ի ժողո_ 8 վուրդ: *‖Եւ մի՛ կապեսցես զմեղս երկպատիկս. զի եւ ո՛չ 'ի միում եղիցիս 9 անպարտ: *Մի՛ լինիր կարճամիտ նոդ_ 10 ւոջ քում: *Աղօթել՝ եւ առնել զողոր 11 մութի մի՛ անտես առներ: *Մի՛ ասի ցես. 'ի բազմութի ընծայից իմոց հայ եսցի Ած. եւ 'ի մատուցանելն իմ Այ բարձրելոյ զընծայս իմ ընկալցի: 12 *Մի՛ այպանեսցես զմարդ 'ի դառնու թե անձին. ‖զի է՝ որ խոնարհեցուցա նէ՝ եւ բարձրացուցանէ՝ շրջահայեացն 13 Ած: *Մի՛ սերմաներ զստութի հա կառակ եղբօր քոյ. եւ ո՛չ 'ի բարեկամի 14 նմանապէս արասցես: *Մի՛ կամիր ստել զամ զստութի. զի հանապա_ 15 զորդութի նր ոչ է բարի: *Մի՛ ձո_ խաբան լինիր ներ բազմութե ծերոց. եւ մի՛ կրկնեսցես զբան յաղօթս քո: 16 *Մի՛ ատեր զգործս աշխատանաց. եւ զերկրագործութի զստեղծեալ 'ի բարձ 17 րելոյն: *Մի՛ զքեզ 'ի թիւ՛ արկցես 18 ներ բազմութե անխրատից: *Յիշեա՛ զբարկութի. քանզի ոչ յամեցուսցէ: 19 *Խոնարհեցո՛ յոյժ զհոգի քո. քանզի վրէժխնդրութի մարմնոյ ամբարշտի՝ 20 հուր եւ որդն: *Մի՛ վրիպիր 'ի բարե_ կամէ՝ ընդ դրամից փոխանակելով. եւ

‖ Սաղ. 142. 2.

Ժողով. 7. 21.

Յոբ. 9. 2. 10.

Պ... 18. 11.

‖ Մատթ. 12. 3.

‖ 1 Թագ. 2. 7.

ո՛չ զեղբայր սիրելի վասն ոսկւոյ անգոսնեսցես։ 21 *Մի՛ մեկնիր ՚ի կնոջէ զգօնէ՝ և բարւոյ. ընդ որոյ վիճակեալ ես երկիւղիւն Տ՟ն. զի շնորհ ամօթխածութեան նորա գերագոյն զոսկի։ 22 *Մի՛ զայրացուսցես զծառայ ճշմարտութ. գործունեայ. և ոչ զվարձկան. որ տուեալ է զանձն իւր։ 23 *Զծառայ զգօն լիցի քեզ սիրելի իբրև անձն քո. մի՛ զրկեսցես զնա յազատութենէ. և մի՛ չքաւոր ՚ի բաց թողցես զնա։ 24 *Գրաստք գոն քեզ՝ դարմանեա՛ զնոսա. և թէ են պիտանիք՝ մնասցեն առ քեզ։ 25 *Որդիք գոն քեզ՝ խրատեա՛ զնոսա. և նուաճեա՛ զնոսա ՚ի մանկութենէ նոցա։ 26 *Դստերք գոն քեզ՝ պահեա՛ զմարմինս նոցա. և մի՛ ցուցցես զդէմ քո զուարթ նոցա։ 27 *Տո՛ւր տուր զդուստր քո. և զմեծ գործ առնիցես. և առն հանճարեղի տուր զնա։ 28 *Կին եթէ է քեզ իբրև անձն քո՝ մի՛ հաներ զնա. և ատելւոյ, զքեզ մի՛ հաւատասցես։

29 *Բոլորով սրտիւ քով պատուեա՛ զհայր քո. և զհեծութիւն մօր քոյ մի՛ մոռանար։ 30 *Յիշեա՛ զի եթէ ՚ի ձեռն նց ծնեալ ոչ եղիցիս. ոչևս լեալ լիցիս. և հատո՛ նոցա զիարդ և նոքա քեզ։ 31 *Բոլորով անձամբ քով երկի՛ր ՚ի Տէ. և զքահանայս նորա սուրբ արա։ 32 *Ամենայնիւ զօրութ. քով սիրեա՛ զնա՝ որ զքեզ արար. և զպաշտօնեայս նորա մի՛ ՚ի բաց թողցես։ 33 *Պատուեա՛ զԱծ ՚ի բոլորանդակէ անձնէ քումմէ. և զպատիւ տո՛ւր քահանայից. և քաւեա՛ զքեզ հանդերձ բազկօք։ 34 *Տո՛ւր նոցա զմասն. որպէս պատուիրեալ է քեզ. առաջաւորութեամբ և քաւութեամբ. և յաւ կամայէն քումմէ քաւեա՛ զքեզ սակաւուք։ 35 *Զտուրս բազկաց քոց. և զզոհ սրբագործութեան մատուսցես Տն. և զառաջինս սրբոց։ 36 *Եւ առ աղքատաց կարկառեա՛ զձեռն քո. զի կատարեսցի քաւութիւն քո՝ և օրհնութիւն քո։ 37 *Գոհութիւն տուրք առաջի ամենայնի կենդանւոյ. և ՚ի մեռելոյ մի՛ արգելցես զշնորհ։ 38 *Մի՛ պակասեսցիս ՚ի միխթարութենէ սգաւորաց. և ընդ ողբացողաց շրջեա՛ց։ 39 *Մի՛ զքեզ յուլացուսցէ տեսանել զհիւանդս. զի յայսցանէ յանդորրութենէ հաստատեսցիս։ 40 *Յեր ամենեցուն գործոց քոց յիշեա՛ զվախճանս քո. և յաւիտեան ո՛չ մեղանչեսցես։

## ԳԼ. Ը.

1 Մի՛ կագեր ընդ առն հզօրի. մի՛ գուցէ անկցիս ՚ի ձեռս նորա։ 2 *Մի՛ հանդանակիր ընդ առն մեծատուն. մի՛ գուցէ ընդդէմ քեզ կացուսցէ զկէճ։ 3 *Զի զբազումս կորոյս ոսկի՝ և արծաթ. մինչև ՚ի սիրտ թագաւորաց ներածգի. և դարձուցանէ։ 4 *Մի՛ վիճեսցես ընդ առն լեզուանւոյ. և մի՛ դիզեսցես ՚ի վերայ հրոյ նր զփայտ։ 5 *Մի՛ հաղորդեսցիս ընդ առն անուսի. զի մի՛ չարաբար սակս նախնւոյ քոյ խօսեսցի։ 6 *Մի՛ անտես արասցես զմարդ դարձուցանող զինքն ՚ի մեղաց. և մի՛ նախատեսցես զնա. յիշեա՛ զի ամենեքեան յապականութեան եմք։ 7 *Մի՛ քամահեր զմարդ ըն ծերութ. իւրում. քանզի ՚ի մէնջ ծերանան։ 8 *Մի՛ սակս մահու թշնամւոյ քոյ ուրախանար. գիտելով զի ամենեքեան մեռանելոց եմք. և յուրախութիւն ոչ կամիմք գալ։ 9 *Մի՛ քամահեր զճառս հնոց իմաստնոց. և յառակս նց շրջագայիլ։ 10 *Զի ՚ի նոցանէ ուսցիս զիմաստութիւն. և զուսումն զգօնութեան. և ծառայել մեծամեծաց առանց տրտընջմանց։ 11 *Մի՛ զքեզ անցցէ պատմութ. հնագունից. զի և ինքեանք ուսան ՚ի հարց իւրեանց։ 12 *Քանզի ՚ի նոցանէ ուսցիս զիմացուած. և ՚ի ժամանակի հարկաւորութեան մարթասցիս տալ զպատասխանի։ 13 *Մի՛ բորբոքեսցես զկայծակունս մեղաւորաց առարկելով ընդ նոսա. և մի՛ կիզցիս բոցով հրոյ մեղաց նոցա։ 14 *Մի՛ ներհակ կացցես յերեսս թշնամանողի. զի մի՛ նստցի իբրև զդարանակալ բերանոյ քոյ։ 15 *Մի՛ տար փոխ առն հզօրագունի քև. զի եթէ փոխ տացես՝ իբրև զկորուսեալ կալ։ 16 *Մի՛ երաշխաւորեսցես ՚ի վր զօրութեան քոյ. զի եթէ երաշխաւորեսցես. իբրև զհատուցանող վարկիր զքեզ։ 17 *Մի՛ դատախազեր ընդդէմ դատաւորի. քանզի ըստ որում իրաւ է, դատէ։ 18 *Ընդ համարձակի մի՛ գնասցես ՚ի ճանապարհ. մի՛ գուցէ ծանրացուսցէ զչարս իւր ՚ի քեզ. զի ինքն ըստ կամաց իւրոց գնայ. և համայն ընդ յիմարութեան նորա կորնչիս։ 19 *Ընդ բարկացողի մի՛ առնիցես զկագ. և ընդ համարձակի մի՛ երթիցես յանապատ. քանզի իբրև ոչինչ է առաջի նր արիւն. և ուրանօր ոչ է օգնականութիւն, ըմբռնեսցէ զքեզ։ 20 *Ընդ յիմարից ՚ի խորհուրդ մի՛ մտաներ. զի զոչինչ կարեն սիրել. եթէ ոչ որք նոցա հաճոյք լիցին։ 21 *Առաջի օտարի մի՛ արասցես զխորհուրդ՝ զի ոչ գիտես զինչ ծնանի։ 22 *Մի՛ ամենայն մարդոյ զխորհուրդ քո յայտնեսցես. մի՛ գուցէ ներբերիցէ զշնորհս կալութ. սուտ. և քամահիցէ զքեզ.

## ԳԼ. Թ.

1 Մի՛ մախասցիս ընդ կնոջ գրկի քոյ. զի մի՛ ցուցցէ 'ի վերայ քո զչարութիւն վարժ ուսման: 2 *Մի՛ տացես կնոջ զզօրութիւն անձին քոյ. զի մի՛ հասցի 'ի վերայ զօրութեան քոյ՝ և ամաչեսցես: 3 *Մի՛ հայեսցիս 'ի կին բազմակամ. մի՛ գուցէ անկանիցիս 'ի գուբս նորա: 4 *Ընդ երգեցիկս մի՛ կանխեր. զի մի՛ լուիցես զայն. մի՛ գուցէ կորնչիցիս յաղագս ուսութեան նորա: 5 *Ընդ կոյս մի՛ պշնուր. մի՛ գուցէ գայթագղեսցիս 'ի վերայ նորա: 6 *Մի՛ տացես պոռնկուեաց զանձն քո ներ միում ումեք. զի մի՛ կորուսցես զանձն քո՝ և զժառանգութիւն: 7 *Մի՛ շուրջ հայիր 'ի փողոցս քաղաքի. և մի՛ մոլորեսցիս 'ի հրապարակս նորա: 8 *Դարձո՛ զերեսս քո 'ի կնոջէ պճնելոյ. և մի՛ շուրջ հայեսցիս 'ի տեսակ օտար: 9 *Մի՛ տեսակի կնոջ յոլովք կորեան. և յայսմանէ ցանկութիւն իբրև զհուր առկիզցէ: 10 *Ամենայն կին՝ որ է պոռնկացեալ, իբրև զաղբ ներ ճանապարհում կոխան լիցի: 11 *Գեղով կնոջ օտարի բազումք զարմացեալք, խոտեցեալք եղեն. զի խօսակցութիւն նորա իբրև զհուր առկիզցէ: 12 *Ընդ կնոջ օտարի մի՛ նստցիս ամենևին. և մի՛ ընկողմանեսցիս ընդ նմա 'ի վերայ մահճի: 13 *Եւ մի՛ վիճեսցես ընդ նմա 'ի գինւոում. մի՛ գուցէ խոտորեսցի սիրտ քո 'ի նա: և արեամբ քով սահեսցիս 'ի կորուստ: 14 *Մի՛ թողցես զբարեկամ հին. զի նորն ոչ լիցի նման նմա: 15 *Գինի նոր՝ բարեկամ նոր. հնասցի՝ և համեղութեամբ ըմպեսցես զնա: 16 *Մի՛ նախանձիր ընդ փառս՝ և փարթամութիւն մեղաւորաց. զի ոչ գիտես որ հանդերձեալ է կործանումն նորա: 17 *Մի՛ հաճոյասցին քեզ զրկանք անիրաւաց. գիտասցես զի մինչև 'ի ստորինսն ոչ հաճոյասցի ամբարշտին: 18 *Հեռի և 'ի բաց լեր 'ի մարդոյ՝ որ ունի զիշխանութիւն սպանանելոյ. և մի՛ կասկածեսցես յերկիւղէ մահու: 19 *Եւ եթէ մերձեսցիս առ նա. մի՛ զայլիմն 'ի մէջ արկաներ. զի մի՛ 'ի բաց բարձցէ զկեանս քո: 20 *Զհաղորդութիւն մահու գիտասջիր. քանզի 'ի մէջ որոգայթից մտանես. և 'ի վերայ ցուեցուցչաց զինու շրջիս: 21 *Ըստ զօրութեան քոյ զգուշացի՛ր զքեզ 'ի մերձաւորէ քումմէ. և ընդ իմաստնոց՝ և հանճարեղաց բացատրեա՛: 22 *Արք արդարք եղիցին քեզ խրախճանակիցք. և 'ի ժամանակի Տեառն եղիցի քեզ փառաւորութիւն: 23 *Եւ 'ի զգօնութեան իցէ քեզ խորհուրդ Տեառն. և ամենայն վիպասանութիւն քո ներ հրամանաց բարձրելոյն: 24 *Ի ձեռս ճարտարաց գործք գովասանին. և իշխան ժողովրդեան ներ իմաստութեան խօսից իւրոց. իսկ 'ի զգօնութեան երեցագունից բանն: 25 *Ահաւոր է ներ քաղաքոջ իւրում այր լեզուանի. և վստահն 'ի բանի իւրում ատելի եղիցի:

Ժողով. 6. 2. Առակ. 5. 2. Մատ. 5. 28. Ծննդ. 34. 2. 2 Թագ. 11. 4. և 13. 1. 2 Թագ. 15. 10.

## ԳԼ. Ժ.

1 Դատաւոր իմաստուն դատեսցէ զժողովուրդ իւր. և իշխանաւոր զգօն, կայուն եղիցի: 2 *Ըստ դատաւորին ժողովուրդք՝ այսպէս և սպասաւորք նորա. և որպիսի է կառավարող քաղաքի՝ այնպիսիք և բնակիչք 'ի նմա: 3 *Թագաւոր անիմաստ՝ կորուսանէ զժողովուրդ իւր. և քաղաքք բնակասցին 'ի ձեռն զգօնութեան հզօրաց: 4 *Ի ձեռին Տեառն կարողութիւն երկրի. և զշահաւէտ կառավարիչ յարուսցէ ըստ ժամանակս 'ի վերայ նորա: 5 *Ի ձեռին Տեառն կարողութիւն մարդոյ. և 'ի վերայ երեսաց դպրի ներգործէ 6 զպատիւ իւր: *Զամենայն զրկանս մերձաւորի մի՛ յիշեսցես: և ոչինչ արասցես ներ գործոց զրկանաց: 7 *Ատելի առաջի Տեառն է և մարդկան հպարտութիւն: և զազրալի ամենայն 8 անիրաւութիւն ազգաց: *Թագաւորութիւն յազգաց յազգս արտաբերի վասն անիրաւութեանց՝ և զրկանաց՝ և ամբարտաւանութեան՝ և զանազանից նենգութեանց: 9 *Իսկ ագահի ոչինչ է անդրութիւն. զի մարդ հպարտանայ երկիր 10 և մոխիր: *Ոչինչ է անիրաւին քան թէ սիրել զդրամ. զի սա և զանձն իւր վաճառելի ունի. քանզի 'ի կեանս իւր զգեստնէ զընտանիս իւր: 11 *Ամ զօրաւոր կարճօրեայ. հիւանդ բազմաժամանակեայ ծանրացուցանէ 12 զբժիշկ: *Զկարճօրեայ զհիւանդ նախահատանէ բժիշկ. այսպէս և թագաւոր՝ այսօր է՝ և վաղիւն մեռանի: 13 *Զի յորժամ մեռանիցի մարդ՝ ժառանգեսցէ զսողունս՝ զգազանս՝ և զորդունս: 14 *Սկիզբն ամբարտաւանութեան յետս դարձումն 'ի Տեառնէ: 15 *Քանզի յայնմանէ, որ արար զնա՝ յետս դարձաւ սիրտ նորա. զի նախկին ամենեցուն մեղաց է հպարտութիւն: որ բուռն հարու զնմանէ, առ լցցի անիծիւք. և կործանեսցէ զնա 'ի վախճանի: 16 *Վասն այսորիկ անպատուեաց զժողովս չարաց. և քակեաց զնոսա մինչև 'ի վախճան: 17 *Զաթոռս նախարարաց ամբարտաւանից կործանեաց Տէր. և

Առակ. 29. 12. 3 Թագ. 12. 13. Դան. 4. 14. Առակ. 19. 17.

և արար նստել զհեզս փոխան նոցա։ 18 * Զարմատս ազգաց ամբարտաւանից գօսացոյց Տր. և տնկեաց զխոնարհս յայնցանէ ազգաց։ 19 * Զերկիրս ազգաց տապալեաց Տր. և կործեաց զնս մինչև 'ի հիմանց։ 20 * Գօսացոյց 'ի նոցանէ՝ և ցիր և ցան արար զնոսա. և կործանեաց զյիշատակս նոցա յերկրէ։ 21 * Զյիշատակ հպարտից կորոյս Տր. և եթող զյիշատակ խոնարհաց զգօնութբ։ 22 * Ոչ է ստեղծեալ ամբարտաւանութի ընդ մարդկան. և ոչ ցասումն ցեղի կանանց։ 23 * Սերմն մարդկան պատուեսցի, այն որ երկնչի յԱյ. իսկ սերմն այն անպատուեսցի. որ էանց զպատուիրանաւ Տն։ 24 * 'Ի մէջ եղբարց ուղղիչ նոցա ներ պատուում. և որք երկնչին 'ի Տէ՝ եղիցին յաչս նորա։ 25 * Փառք փարթամաց՝ պատուականաց՝ և աղքատաց՝ երկիւղ Տն։ 26 * Մի՛ անտես առներ զայր զարդար և զաղքատ. և մի՛ մեծացուցաներ զայր մեղաւոր և զփարթամ։ 27 * Մեծ՝ և դատաւոր՝ և կարող է 'ի պատուում. և ոչ գոյ մեծագոյն քան զնա. որ երկնչի յՏն։ 28 * Ծառայի զգօնի ազատք ծառայեսցեն. և այր խորագէտ և խրատեալ ոչ տրտնջեսցէ կշտամբեալ. և տգէտ ոչ պատուեսցի։ 29 * Մի՛ բարձրացուցաներ զքեզ 'ի գործել զգործ քո. և մի՛ յամրանար 'ի ժամանակի նեղութե։ 30 * Լաւ եգոյն է՝ որ գործէ՝ և առատանայ յամենեսեան. քան որ պարծի՝ և կարօտանայ հացի։ 31 * Որդեակ 'ի հեզութե պահեա զանձն քո. և տուր նմա զշուք ըստ արժանւոյն իւրոյ։ 32 * Զմեղանչողն յանձն իւր՝ ո՞վ արդարացուսցէ՝ և ո՞ պատուեսցէ զանարգօղն զանձն իւր։ 33 * Աղքատ պարծի 'ի ձեռն մակացութե և երկիւղի իւրոյ. և է մարդ՝ որ պատուի վասն գոյացութե իւրոյ։ 34 * Այլ որ պարծի 'նաղքատութե՝ որքան առաւել 'ի գոյացութե իւրում. և որ փառաւորի 'ի գոյացութե՝ զաղքատութի քամահէ։

## ԳԼ: ԺԱ.

1 Իմաստութի խոնարհի բարձրացուսցանէ զգլուխ նորին. և 'ի միջի մեծամեծաց գահոյակից զնա արասցէ։ 2 * Մի՛ գովեսցես զայր առաջի իւր. և մի՛ քամահեր զմարդ յանդիման իւ_քեան։ 3 * Փոքր է ներ թռչնոց մեղու. և սկիզբն քաղցրութե ունի պտուղ նր։ 4 * Ներ զարդուն մի՛ պարծեսցիս երբեք. և ոչ յաւուր պատուոյ քո բարձրանասցիս. քանզի գործք զարմանալիք բարձրելոյն միայնոյ. և փառաւորագոյնք՝ և ծածկեալք՝ և անտեսանելիք գործք նորա։ 5 * Բազումք բռնակալք նստան յաթոռ. և անակնկալուն տարան զթագ։ 6 * Բազումք կարօղք նեղեցան յոյժ։ և փառաւորագոյնք մատնեցան 'ի ձեռս օտարաց։ 7 * Մի՛ ինչ չև հարցեալ իցես, մի՛ պախարակեսցես զոք երբեք. և իբրև հարցցես, յանդիմանեա արդարաբար։ 8 * Նախ քան զլսելն մի՛ պատասխանեսցես բանի. և 'ի մէջ խօսից մի՛ առածցիս խօսիլ։

9 * Վասն այնորիկ իրի, որ զքեզ թախանձէ՝ մի՛ ընդդիմասցիս։ և 'ի դատաստանի մեղաց մի՛ կանգնեսցիս։ 10 * Որդեակ մի՛ 'ի բազում իցեն գործք քո։ Թէ փարթամ եղիցիս. ոչ եղիցիս անպարտ 'ի յանցանաց. զի թէ զհետ երթիցես՝ ոչ ըմբռնեսցես. և ոչ խուսեսցես, եթէ նախընթաց լինիցիս։ 11 * Է մարդ ջանացօղ և փութացօղ. և նեղ գօղ ամբարիշտ. և այնքանաւ առաւել ոչ յաւելցի։ 12 * Է մարդ վհերոտեալ կարօտ օգնականի. յաւէտ պակասեալ 'ի զօրութե. և յաւելեալ չքաւորութբ. 13 * Աչք ակն Տր հայեցաւ 'ի նա բարութբ. և ուղղեաց զնա 'ի խոնարհութէ նորա։ և բարձրացոյց ըզ գլուխ նորա։ և զարմացեալք եղեն 'ի նա բազումք. և պատուեցին զԱծ։ 14 * Բարի և չար. կեանք և մահ. աղքատութի և հարստութի յՏն են։ 15 * Իմաստութի և խրատ. և գիտութի օրինաց առ Այ։ սէր՝ և ճանապարհք բարեաց առ նմա։ 16 * Մոլորութի և խաւար վասն մեղաւորաց ստեղծան. բայց որք ցնծան 'ի չարիս՝ ծերասցին 'ի չարիս։ 17 * Պարգև Տն մնայ 'ի վերայ արդարոց և յառաջադիմութի նորա փոխանորդ ունիցի յաւիտեան։ 18 * Է որ փարթամանայ անխնայաբար առնելով. և այն է մասն վարձու նորա։ 19 * Նայնմ զոր ասէ։ Գտի զհանգիստ ինձ։ և այժմ կերից 'ի բարեաց իմոց միայնակ։ 20 * և ոչ գիտէ՝ եթէ ժամանակ անցանելոց է. և մահ մերձենալոց. և թողլոց է զամենայնսն այլոց. և ինքն մեռանելոց։ 21 * Կաց 'ի վկայութե քո. և նովին խօսեաց՝ և ներ գործոց պատուիրանաց քոց հնացիր։ 22 * Մի՛ կացցես ներ գործոց մեղաւորաց. բայց յուսա՛ յԱծ՝ և կաց 'ի տեղւոջ քում։ 23 * Զի դիւրին է յաչս Տն յանկարծ պատուել զաղքատս։ 24 * Օրհնութի Տն 'ի վարձ արդարոյ ճեպէ. և ներ ժամում արագում փոխատրութի նորա պտղաբերի։ 25 * Մի՛ ասասցես. զինչ գործէ ինձ. և ո՞ք իցեն ինձ յայսմհետէ բարիք։ 26 * Մի՛ ասիցես. բաւական եմ ինձ. և

զինչ

Առակ. 17. 2. — 2 Թագ. 12. 13. — Առակ. 12. 9. — Չի գոյեր 'ի եբր. — Ծննդ. 41. 40. — Դանի. 6. 3. — Յոբ. 7. 18. — Գործ. 12. 21. և 22. — 1 Թագ. 15. 28. — Հռոմ. 6. 7. — Առակ. 18. 13. — Ոչ են յեբր. — 1. Տիմ. 6. 9. — Ղուկ. 4. 8. — Յոբ. 42. 10. — Յոբ. 1. 21. — Ղուկ. 12. 19.

զինչ յայտնանէ չարագոյն եղէց:
27 *Յաւուր բարեաց մի՛ լիցիս անյիշող չարաց. և յաւուր չարաց մի՛ լիցիս անյիշող բարեաց: 28 *Զանզի դիւրին է առաջի Տն յաւուր վախճանի հատուցանել իւրաքանչիւրոյ ըստ ճանապարհաց իւրոց: 29 *Չարութիւն ժամու՝ զմոռացումն առնէ փափկութեան մեծի. և ՚ի վախճանի մարդոյ մերկութիւն գործոց նորա: 30 *Նախքան զմահ մի՛ երանեսցես զմարդ զոք. զի յորդւոց իւրոց ճանաչի այր: 31 *Մի՛ զամենայն զմարդ ՚ի տուն քո տարցիս. զի բազում են դարանք որոգայթի: 32 *Զի որպէս բղխեն ՚ի փորոտեաց զնեխութիւն. և որպէս կաքաւ առածի ՚ի ծուղակ. և որպէս այծեամն յորոգայթ՝ այսպէս և սիրտ հպարտից. և որպէս դէտ տեսանող զկործանումն մերձաւորի իւրոյ: 33 *Զանզի զբարիս ՚ի չարս դարձուցանող դարանակալն. և ներ ընտրելոց դնէ զբիծ: 34 *Ի կայծոյ միոյ զօրանայ հուր. և ՚ի միոյ նենգութենէ զօրանայ արեան հեղութիւն. իսկ մարդ մեղաւոր՝ արեան դարանի: 35 *Զգուշացի՛ր դու ՚ի չարա յուզէ. զի հնարէ զչարիս. մի՛ գուցէ ածցէ ՚ի վերայ քո զկատականս ՚ի մշտնջենաւոր: 36 *Ընդգեա՛ առ քեզ զայլասեռն. և կործանեսցէ զքեզ փոթորկաւ. և օտարացուսցէ զքեզ ՚ի քոյոց սեպհականաց:

## ԳԼ: ԺԲ.

1 Եթէ բարերարեսցես, գիտեա՛ որոյ արասցես. և եղիցի շնորհ ներ բարեաց քոյ բազում: 2 *Բարի՛ արա արդարոյն. և գտանիցես զտրիտուր զմեծ. և եթէ ոչ ՚ի նմանէ, ստուգիւ ՚ի Տէ: 3 *Օի՛ ոչ է նմա բարւոք. որ հանապազ զօրդ է ՚ի չարիս, և զողորմութիւն ոչ բաշխողի: քանզի և բարձրեալն ատէ զմեղաւորն. և ողորմած է ապաշաւողաց: 4 *Տո՛ւր ողորմածին՝ և մի՛ ընկալցիս զմեղաւորն. և ամբարշտաց և մեղաւորաց հատուսցէ զվրէժ. պահելով զնոսա յաւուր վրէժխնդրութեան: 5 *Տո՛ւր բարւոյն. և մի՛ վերընկալցիս զմեղաւորն: 6 *Բարի՛ արա խոնարհին. և մի՛ տացես ամբարշտին: արգել զհացս տալ նմա. մի՛ ներ նոքա հզօրագոյն քան զքեզ լիցի: 7 *զի զչարիս զերկպատիկս գտցես նամենայն բարիս, զորս միանգամ արասցես նմա: քանզի և բարձրեալն ատէ զմեղաւորս. և ամբարշտաց հատուցանէ զհատուցումն: 8 *Ոչ ճանաչի ներ բարեաց բարեկամ. և ո՛չ ծածկի ներ չարաց թշնամի: 9 *Ներ բարեաց առն, թշնամիք նր ՚ի տրտմութեան: և ՚ի վիշտս նորա բարեկամն ճանաչի:
10 *Մի՛ հաւատասցես թշնամւոյ քոյ յաւիտեան. զի որպէս պղնձեղէնն ժանկոտ է խորամանկութիւն նր: 11 *Եւ թէ խոնարհեալ գնայ կորացեալ, վերադրեա՛ զանձն քո. և պահեա՛ զքեզ ՚ի նմանէ: 12 *Մի՛ կացուսցես զնա հանդէպ քեզ. և մի՛ նստցի յաջմէ քումմէ. մի՛ գուցէ դարձեալ ՚ի տեղի քո՝ խնդրեսցէ զաթոռ քո: և յետոյ ծանիցես զբանս իմ. 13 և խօսիւք իմովք մորմոքեսցիս: *Ո՛վ ողորմեսցի թովչի՝ յօձէ խայթեցելոյ. և ամենեցուն մերձեցողաց առ գազանս. և այսպէս որ հաղորդի ընդ առն չարաբարոյի. և թաթաւի ՚ի մեղս նր: 14 *Մի՛ ժամ ընդ քեզ բնակեսցի. իսկ թէ խոտորեսցիս՝ ո՛չ համբերեսցէ: 15 *Շրթամբք իւրովք քաղցրանայ թշնամի. և ներ սրտի իւրում նենգէ. զի կործանեսցէ զքեզ ՚ի խորափոխ: 16 *Աչօք իւրովք արտասուէ թշնամին. և թէ գտանիցէ զժամանակ, ոչ 17 յագի արեամբ: *Եւ թէ դիպեսցին քեզ չարիք. գտցես զնա անդ զառաջ 18 նորդ: *Աչօք իւրովք արտասուէ թշնամի. և իբրև օգնական զներբանս 19 փորէ ոտից քոց: *Զգլուխ իւր շարժեսցէ. և ծափէ ձեռամբ. և բազում քսութիւնս արարեալ՝ փոխարկեսցէ զերեսս իւր:

## ԳԼ: ԺԳ.

1 Որ շօշափէ զձիւթ՝ պղծեսցի ՚ի նմանէ. և որ կցորդի ամբարտաւանի, ստածանի զամբարտաւանութիւն: 2 *Աշխ ՚ի վերքան զինքն բառնայ. որ պատուականագունի քան զինքն հաղորդէ: և փարթամագունի քև մի՛ ընկեր լիցիս: 3 *Որ հաղորդակցեսցէ ըղկաթսայ ընդ պուտոյ. զի յորժամ ընդ հարցին՝ փշրեսցին: 4 *Փարթամն անիրաւաբար գործեաց՝ և մռմռայ. իսկ աղքատն առ ոտն հարեալ լռեսցէ: 5 *Եթէ տուեալ լիցիս՝ առցէ զքեզ. և եթէ ոչ ունիցիս՝ թողցէ զքեզ: 6 *Թէ ունիս՝ շարակեցցէ ընդ քեզ. և ունայնացուսցէ զքեզ. և ինքն ո՛չ ցաւեսցի ՚ի վիշտ քո: 7 *Թէ հարկաւոր նմա լիցիս. ենթարկցէ զքեզ. և կատակեալ զյոյս տացէ՝ պատմելով քեզ ըզբարիս՝ և ասասցէ: զինչ գործ է քեզ: 8 *Եւ ամաչեցուսցէ զքեզ կերակրօք իւրովք. մինչև զքեզ նանրացուսցէ երկիցս, և երիցս. և ՚ի վախճանի ծիծաղեսցի զքև. և յետոյ տեսեալ ՚ի բաց թողցէ զքեզ. և զգլուխ իւր շարժեսցէ առ քեզ: 9 *Խոնարհեա՛ց Այ. և 10 ակնկալ ձեռին նր: *Զգուշ լեր՝ մի խա-

խաբեցեալ առ յիմարութիւն կորանայ-
ցես: * Մի լինիր խոնարհ յիմաստու- 11
թեան քում. մի կորացեալ 'ի յիմարու-
թիւն զբաղեսցիս: * Հրաւիրեալ 'ի կա- 12
րողագունէ գնա. զի յայսմանէ առաւ-
ել զքեզ հրաւիրեսցէ: * Մի վաս- 13
թար լինիցիս. և մի ըմբոստասցիս. և
մի հեռի լինիցիս 'ի նմանէ. մի գնասցես
'ի մոռացումն: * Մի ըմբռնեսցիս 'ի 14
հաւասար խօսելոյն ընդ նմա. մի հա-
ւատասցես բազմաց բանից ն՟ր. զի 'ի յոլո-
վից խօսից փորձեսցէ զքեզ. և կատա-
կելով հարցանիցէ զքեզ 'ի գաղտնեացն
քոց: * Անես հոգի ն՟ր պահեսցէ զբանս 15
քո. և ոչ խնայեսցէ 'ի չարութեան և 'ի
բանտից: * Զգուշացիր քեզ՝ և զգաստ 16
լեր մտերմաբար լսարանի քոյ. քանզի
ընդ կործանման քոյ շրջիս: * Բայց 17
լսելով զսոսա իբրև յերազում տես.
և հսկեսցես: * Յամենայնեան կեանս 18
քո սիրեա զՏ՟ծ. և կոչեա զնա 'ի փր-
կութեան քում: * Ա՟մ շնչաւոր սիրէ զնը- 19
մանիս իւր. այսպէս և ա՟մ մարդ զմեր-
ձաւորս իւր: * Ա՟մ մսեղի 'ի նմանին 20
իւր շարագուգի. և ա՟մ մարդ նմանւոյ
իւրոյ ընկերանայ: *‖ Ո՞չ հաղորդես- 21
ցի գայլ ընդ գառին երբէք. այսպէս
մեղաւոր ընդ արդարոյ: * Զի՞նչ հա- 22
ղորդութիւն է մարդոյ սրբոյ ընդ շան.
կամ զի՞նչ բաժին փարթամի ընդ աղ-
քատի: * Որս առիւծու՝ ցիռ յանապա- 23
տի. այնպէս և արօտ ընչեղաց աղքատք:
* Որպէս գարշութիւն է հպարտի խոնար- 24
հութիւն. այսպէս և զազրութիւն հարս-
տի աղքատ: * Մեծատանն շարժեալ 25
հաստատի 'ի բարեկամաց իւրոց. իսկ
նուաստն յորժամ անկցի, մերժի և 'ի
ծանօթից: * Մեծատանն գթելով 26
ընդունողք բազումք. խօսեցաւ հպար-
տութիւն՝ և արդարացուցին զնա:
* Նուաստն գթեցաւ՝ եւ առաւել 27
յանդիմանի: խօսեցաւ զգօնաբար՝ և
ոչ տուաւ նմա տեղի: * Մեծատունն 28
խօսեցաւ՝ և ամենքն լռեցին. և զբան
նորա մինչև յամպս վերացուցին:
* Աղքատն խօսեցաւ. և ասեն. ո՞վ է 29
այս. և թէ գայթագղեսցի, կործա-
նեն զնա: * Բարի է գոյացութիւն. որոյ 30
ոչ են մեղք 'ի խիղճ մտաց. և չարա-
գոյն աղքատութիւն 'ի բերանում ամ-
բարշտաց: * Միտ մարդոյ այլայլէ 31
զդէմ ն՟ր. կամ 'ի բարիս. կամ 'ի չարս:
* Զհետ սրտի բարւոյ. և զդէմ բա- 32
րի զծուարին գտցես՝ և հանդերձ աշ-
խատութեամբ:

## Գլ. ԺԴ.

1 Երանեալ է այր. ‖ որ ոչ է գայթագ-
ղեալ բանիւ բերանոյ իւրոյ. և
ոչ է մորակեալ տրտմութեամբ յանցա-
2 նաց: * Բարեբախտ է. որ ոչ ստացաւ
անձին իւրոյ զտրտմութիւն. և ոչ ան-
3 կաւ 'ի յուսոյ իւրոյ: * Ա՟ռն կարճամ-
տի՝ և դիւրափոփոխի՝ թարց պատշա-
ռի է գոյացութիւն. և մարդոյ նախան-
4 ձոտի ընդէ՞ր է ոսկի: * Որ կեղեքէ յան-
ձնէ իւրմէ անիրաւաբար՝ այլոց ժողո-
վէ. և 'ի բարիս ն՟ր այլք յղփանայ:
5 * Որ ինքեան չար է. որո՞յ ուրուք բարի
եղիցի. և ոչ զուարճասցի 'ի բարիս իւր
6 * Որ մախայ ընդ ինքեան. ոչ ինչ է
նմա չար. և այս տրիտուր է չարութե-
7 ն՟ր: * Եւ թէ բարւոք արասցէ. տգի-
տաբար և ակամայ առնէ. և 'ի վախ-
8 ճանի յայտնէ զչարութիւն իւր: * Չար
է ակն նախանձոտի. և դարձուցանող
զերեսս իւր. և անտես առնող զանձն
9 իւր: * Անյագ է ակն կարճամտի 'ի մա-
սին անիրաւութեան. ոչ յագիցի՝ մինչև
սպառեսցէ խորշակահարեալ զանձն
10 իւր: * Ակն չար առ չարս. և ոչ յագի
հացիւ. այլ կարօտեալ և 'ի տրտմու-
թեան եղիցի 'ի վերայ սեղանոյ իւրոյ:
11 * Որդեակ. թէ ունիս՝ զբարի արա ընդ
քեզ. և Տ՟ն զմատուցմունս արժա-
12 նաւորս մատո: * Յիշեա զի մահ ոչ
յամեսցի. և վկայութիւն ստորնայնոց,
զի ցուցաւ քեզ. զի վկայութիւն այսո-
րիկ աշխարհի, մահու մեռանիցի:
13 *‖ Յառաջ քան զմահ բարի արա սի-
րելոյ քոյ. և ըստ արմտեաց քոց կար-
14 կառեալ տուր աղքատի: * Մի զլա-
նար յօրէ բարւոյ՝ և մասնիկ բարւոյ
15 տրոյ զքեւ մի անցանիցէ: * Մի ար-
դեօք այլոց թողցես զցաւս՝ և զվաս-
տակս քո 'ի բաժանման վիճակի:
16 * Տուր՝ և առ. և արդարացո զանձն քո:
17 * Յառաջ քան զելն քո գործեա զար-
դարութիւն. քանզի ոչ է գտանել առ
18 ներքինս զկերակուր: * ‖ Ա՟մ մսեղի
որպ՟ զհոտ հնասցի. և որպ՟ տերև պտղա-
19 բեր 'ի ծառոց դալարւոյ: * Ազգք բու-
սանին. և այլք թօթափին. այսպէս
և լինելութիւն մսոյ և արեան. ոմն վախ-
20 ճանի, և ոմն ծնանի: * Ա՟մ գործ ա-
պականելի ներ վերջնում պակասես-
ցի. և որ զայն գործէ. գնայ ընդ նմա:
21 * Եւ ա՟մ գործ ընտրեալ արդարասցի.
և որ գործէ զայն՝ պատուեսցի 'ի նմա:
22 *‖ Երանեալ է այր. որ ներ իմաստու-
թեան յամիցի. և որ յարդարութեան իւր
ում մտածիցէ. և 'ի զգօնութեան խոր-
հեսցի զշրջագիտութիւնս Տ՟ն:

* Որ

‖ Սայր. 19. 16.
ոչ ինչ է չարագոյն քան զնա
‖ Սէր. 4. 1.
Տօբիթ. 4. 7.
Ղուկ. 19. 9.
դիւէ ո՞չ այլոց
‖ Եսայ. 40. 6.
Յակոբ. 1. 10.
1. Պետ. 1. 24.
‖ Սաղմ. 1. 2.
6. 14.

23 *Որ մտախոհ լինի զճանապարհս ն՟ր 'ի սրտի իւրում. և ն՟ր ծածկեցելոց իւրոց իմացօղ. ընթացօղ զկնի ն՟ր իբրև զհետապօտօղ. և 'ի ճանապարհս ն՟ր կայացօղ: 24 *Որ նկատէ 'ի ձեռն պատուհանից ն՟ր. և ն՟ր դրանց ն՟ր լսօղ: 25 *Որ հանգչի հանդէպ տան նորա. և յորմն ն՟ր ցցեալ զցուպ կացուսցէ զհովանոց իւր առ ձեռս ն՟ր. և հանգիցէ ն՟եր խղկում ն՟ր բարիք է երկայն աւուրս: 26 *Կացուսցէ զորդիս իւր է վերա ն՟ս. և 'ի ներքոյ ճղոյ յարամիասցէ: 27 *Հովանաւորեսցի ենթ վրանի ն՟ր 'ի տօթում. և ն՟ր փառաց ն՟ր հանգիցի:

## ԳԼ: ԺԵ.

1 Որ երկնչի յՏ՟Ե՟, արասցէ զբարի. և որ բուռն հարկանէ արդարութե՟ ըմբռնէ զնա: 2 *Եւ ընդ առաջ եկեսցէ նմա իբրև մայր պատուեալ. և իբրև կին 'ի կուսութե՟ ընկալցի զնա: 3 *Կերակրեսցէ զնա հացիւ կենաց՝ և իմացականութե՟. ǁ և ջրով իմաստութե՟ և փրկութե՟ արբուսցէ զնա. և ամրասցի 'ի նմա. և ոչ կորասցի: 4 *Եւ պարփակեսցէ զնա՝ և ոչ ամաչեսցէ. և բարձրացուսցէ զնա առ մերձաւորս իւր: 5 *Եւ 'ի մէջ եկեղեցւոյ բացցէ զբերան ն՟ր. առ լցցէ զնա հոգւով իմաստութե՟ և մտացութե՟. և ձորձով փառաց զգեստաւորեսցէ զնա: 6 *Զխնդութի՟ և զցնծութի՟ գանձեսցէ 'ի վ՟ր նորա. և անուամբ մշտնջենաւորականաւ ժառանգեսցուսցէ զնա: 7 *Մարդիկք յիմարք ոչ ըմբռնեսցեն զնա. և մարդիկք զգօնք ընդ առաջ ելցեն նմա. մարդիկք խելագարք ոչ տեսցեն զնա. զի 'ի հեռու 'ի բաց գոյ յամբարտաւանութե՟, և նենգութե՟: 8 *Արք ստաբանք ոչ եղիցին նմա յիշատակօղք. և արք ճշմարիտք գտանիցին 'ի նմա: և զփոխանորդութի՟ ունիցին մինչև 'ի հայեցումն Տ՟Ե՟: 9 *Ոչ է չքնաղ գովութի՟ 'ի բերան մեղաւորի: 10 *Վասնզի յՏ՟Ե՟ յառաջագայեցաւ իմաստութի՟. քանզի իմաստութե՟ Տ՟Ե՟ առ կացցէ գովութի՟. և 'ի բերանում հաւատարմի առատասցի. և տէրօղն տացէ զնա նմա: 11 *Մի՛ ասասցես 'ի ձեռն Տ՟Ե՟ ոչ է. զի զորս ատէ, մի՛ արասցես: 12 *Մի՛ ասասցես. նա զիս ընկճեաց. քանզի ոչ են նմա հարկաւորք մարդիկք ամբարիշտք: 13 *Զամ զազրութի՟ մոլորութե՟ ատէ Տ՟ր. և ոչ եղիցի ցանկալի երկիւղածաց նորա: 14 *Տ՟Ծ 'ի բնէ հաստատեաց զմարդն. և եթող զնա 'ի ձեռին խոկման իւրոյ: 15 *Տուարեաց զպատուիրանս և զհրամանս իւր: 16 *ǁ Եթէ կամիս ցիս զպատուիրանս պահել՝ պահեսցեն զքեզ. և 'ի մշտնջենաւորս զհաւատ հաճոյական առնել: 17 *Հակադրեաց քեզ զջուր և զհուր. առ որ կամիս, մխեա զձեռն քո: 18 *ǁ Յառաջ քան զմարդ կեանք և մահ. բարի և չար. որ հաճոյ ասցի նմա, տացի նմա: 19 *Վասնզի բազում իմաստութի՟ն Տ՟յ. և հզօր 'ի կարողութե՟. տեսօղ ամենայն առանց միջոցի: 20 *ǁ Աչք Տ՟ն առ երկիւղածս իւր. և ինքն ճանաչէ զամ զգործ մարդոյ: 21 *Ոչ ումեք պատուիրեաց ամբարշտօրէն գործել. և ո՛չ ումեք ետ զբացատութի՟ն մեղանչելոյ: 22 *Զի ո՛չ ցանկայ բազմութե՟ որդւոց անհաւատից՝ և անշահեկանաց:

ǁ Յով. 4. 10. ǁ Մատ. 19. 17. ǁ Երեմ. 21. 7. ǁ Սաղ. 33. 16. Եփես. 4. 13.

## ԳԼ: ԺԶ.

1 Մի՛ բերկրեսցիս ընդ որդիս ամբարշտս՝ թէ բազմապատկեսցին. և մի՛ զուարճասցիս 'ի վ՟ր ն՟ց, թէ ոչ է 2 երկիւղն Տ՟Ե՟ 'ի նոսա: *Մի՛ հաւատար կենաց ն՟ց. և մի՛ հայեսցիս յաշխատանս 3 ն՟ց: *Զի բարեգոյն է մի երկիւղած յՏ՟յ. քան հազար որդիք ամբարիշտք: 4 *Եւ շահաւէտ է մեռանիլ անորդի. քան թողուլ զորդիս ամբարիշտս: 5 *'Ի միոջէ զգօնէ բնակ լիցի հայրենիք. յերից ամբարշտաց ամայանայ: 6 *Զյոլովս զայսպիսիս ետես ակն իմ. և զօրագոյնս քան զսոսա լուաւ ունկն 7 իմ: *ǁ 'Ի ժողովարանի մեղանչողաց բորբոքեսցի հուր. և 'ի ցեղում անհաւատում վառեսցի բարկութի՟: 8 *ǁ Ոչ աղօթեցին վասն մեղաց իւրեանց հսկայքն նախկինք. որք աւերեցան յուսացեալք 'ի զօրութի՟ իւրեանց: 9 *Եւ ո՛չ անխայեաց 'ի պանդխտութի՟ն Ղովտայ. և գարշեցոյց զնս վ՟ս հպարտութե՟ բանից ն՟ց: 10 *Ոչ ողորմեցաւ նոցա. զբովանդակ զազգն կորուսեալ. և բաց բարձեալ զնոսա ներ մեղաց իւրեանց: 11 *ǁ Եւ ո՛չ զվեց հարիւր հազար հետևակսն՝ որք ժողովեցան 'ի խստութե՟ սրտի իւրեանց: և թէ մին ն էր ընդվզեալ՝ սքանչա 12 ցումն. թէ լեալ էր ապահարկ: *Զի ողորմութի՟ և բարկութի՟ է ընդ նմա. կարօղ ողոքողութի՟. և հեղօղ զբարկութի՟: 13 *Ըստ ողորմութե՟ իւրում. այսպէս կշտամբութի՟ նորա զմարդիկք 14 ըստ գործոց իւրեանց դատէ: *Ոչ փախիցէ ներ յափշտակութե՟ մեղաւորն. և ոչ յամեցուսցէ համբերութի՟ զողորմութի՟ 15 արդարոյն: *Ամ ողորմութի՟ արասցէ զտեղի ǁ իւրաքանչիւրոյ ըստ արժանաւորութե՟ գործոց իւրոց: և ըստ իմաց 16 մանն նշդեհութե՟ իւրոյ: *Մի՛ ասասցես.

ǁ Ծննդ. 6. 4. ǁ Թուոց 14. 20 և 26. 51. ǁ Հռոմ. 2. 6.

ցես. յԱ՟Յ թաքեայց. և յաւարտին ո՞վ զիս յիշեսցէ :

17 * 'Ի ժողովրդեան մեծութեամբ ոչ ճանաչիցիմ. զի զի՞նչ է անձն իմ յայսքան անհուն ստեղծուածս :

18 * Ահա երկինք. և երկինք երկնից. և անդունդ՝ և բովանդակ երկիր. և որք 'ի նոսա են՝ յերեւաց նր սասանին :

19 * Լերինք միանգամայն. և բլուրք. և հիմունք երկրի. երբ հայեսցի 'ի նոսա Ա՟Ծ՝ ահիւ դողան :

20 * Եւ ամենեւեան յայսոսիկ անզգայացեալ է սիրտ. և զիմ սիրտ իմանի յայնմանէ :

21 * Եւ զճանապարհս նր, ո՞ գիտէ. և զմրրիկ. զոր և ոչ ակն տեսցէ մարդոյ :

22 * Զի բազումք են նր գործք 'ի թաքստի. այլ զգործս արդարութե նր ո՞ պատմեսցէ. կամ ո՞վ ժուժկալեսցէ : զի հեռի է վկայութի յոմանց. և հարցումն ամենեցուն 'ի կատարածի է :

23 * Որ փոքրկանայ սրտիւ՝ խոկայ զնանիրս. և այր անհանճար և վրիպակ խորհի զյիմարութի :

24 * Լուր ինձ որդեակ իմ. և ուսիր զխրատ զգօնութե. և բանից իմոց զգուշացիր սրտիւ քով :

25 * Եւ ասացից 'ի հաւասարակշռութեան զխրատ. և զննեցից ճառել զիմաստութի : և 'ի բանից իմոց զգուշացիր սրտիւ քով. և ասեմ 'ի հաւասարակութե հոգւոյ զզօրութիս. զորս եդ Ա՟Ծ ներ գործոց իւրոց 'ի բնէ :

26 * Եւ իրաւանց Ա՟Յ գործք նորա 'ի սկզբանէ. և 'ի բաղկացութե նց զանազանեաց զբաժինս նց՝ և սկզբունքս նց 'ի սեռս իւրեանց :

27 * Զարդարեաց 'ի մշտնջենաւորս զգործս նց. ոչ քաղցեան. և ոչ ծարաւեցան. և ոչ 'ի բաց թողան 'ի գործոց նր : [margin: և ոչ աշխատեցան]

28 * Իւրաքանչիւր զմերձաւոր իւր մի՛ նեղացուսցէ մինչև յաւիտեան :

29 * Մի՛ լիցիս անհաւատ բանից նորա :

30 * Յետ այսորիկ Ա՟Ծ յերկիր հայեցաւ՝ և ելից զնա բարեօք իւրովք :

31 * Հոգի կենդանականի ամի ճառեաց առաջի երեսաց նր. և 'ի նոյն դարձեալ վերադարձումն նց :

## ԳԼ: ԺԷ:

1 Տէր ‖ ստեղծ յերկրէ զմարդն. և ըստ պատկերի իւրոյ արար զնա : [margin: ‖ Ծննդ. 1.27.]

2 * Եւ վերստին դարձոյց զնա յայս. և ըստ ինքեան զգեցոյց զնա զօրութբ :

3 * Զթիւ աւուրց՝ և զչափ ժամանակաց ետ նմա. և ետ նմա զկարողութի նց. որք են 'ի վր երկրի :

4 * Եդ զերկիւղ նր 'ի վր ամի մարմնի. և տիրեաց գազանաց՝ և թռչնոց :

5 * ‖ Ստեղծեաց յինքենէ օգնականութի նման ինքեան. զխորհուրդ. և զլեզու. և զաչս. և զունկս. և զսիրտ ետ նց խորհելոյ. և մակացութբ իմացականի լը- [margin: ‖ Ծննդ. 2.18. և 5. 1.]

6 ցոյց զնոսա : * Ստեղծ նց զգիտութի հոգւոյ. զգօնութբ ելից զսիրտ նց. զչարս և զբարիս եցոյց նոցա :

7 * Եդ զաչս իւր 'ի վր սրտից նց. ցուցանել նց զմեծամեծս գործոց իւրոց :

8 * Զի զանուն սրբագործութե նորա գովասանեսցեն. և պարծիլ 'ի սքանչելիս նր՝ և մեծացուցանելով պատմեսցեն զգործս նր :

9 * Յաւել նց զմակացութի. և զօրէն կենաց ժառանգեցոյց նց :

10 * Զուխտ յաւիտենական կացոյց ընդ նոսա. և զարդարութի և զդատաստան իւր եցոյց նց :

11 * Եւ զմեծամեծս պատուոյ նր ետես ակն նց. և զպատիւ ձայնի լուան ականջք նց. և ասաց նց. զգուշացարո՛ւք յամե անիրաւութէ :

12 * Եւ պատուիրեաց իւրաքանչիւրոյ սակս մերձաւորի իւրոյ :

13 * Ճանապարհք նց առաջի նր են միշտ. ոչ են թաքուցեալք յաչաց նորա :

14 * ‖ Յիւրաքանչիւր ազգն նախակարգեաց զկառավար : [margin: ‖ Հռով. 13.1.]

15 * Եւ մասն Տ՟Ն Իէղ եղև բացորոշեալ :

16 * Եւ ամենեքեան գործք նց իբրև արեգակն առաջի Տ՟Ն. և աչք նր թարց միջոցի ներանկատօղք 'ի ճանապարհս նոցա :

17 * Ոչ են ծածկեալք վկայութիք 'ի ձեռն անօրէնութե նց. և ամենեքեան անօրէնութիք նց 'ի տեսութե Տ՟յ :

18 * ‖ Ողորմութի առն իբրև զդրոշմիկ ընդ ինքեան. և զշնորհս մարդոյ իբրև զբիբ պահպանեսցէ : [margin: ‖ Սիր. 29. 16.]

19 * ‖ Եւ յետոյ յարիցէ. և հատուսցէ նց զհատուցումն իւրաքանչիւրոյ 'ի գլուխ ինքեանց. և դարձուսցէ 'ի կողմանս ներքինս երկրի : [margin: ‖ Մատթ. 25. 35.]

20 * Իսկ զղջացելոցն ետ զճանապարհ արդարութե : և հաստատեաց զպակասեալս տանիլ. և տեղեկացոյց զվիճակ ճշմարտութե :

21 * Դարձիր առ Տ՟Ր՝ և 'ի բաց թող զմեղս քո :

22 * Աղերսեա առաջի երեսաց Տ՟յ՝ և նուազեցո զգայթագղութիս :

23 * Դարձիր առ Տ՟Ր. և յետս դարձ յանիրաւութէ քումմէ. և սաստկապէս ատեա զգարշութի :

24 * Եւ ծանիր զարդարութիս և զիրաւունս Տ՟յ : և կաց 'ի բաժնի առաջադրութե, և աղօթից բարձրելոյն Տ՟յ :

25 * 'Ի կողմանս ընթասցիր յաւիտենից սրբոյ. ‖ ընդ կենդանեաց՝ և տուողաց զխոստովանութի Տ՟յ : [margin: ‖ Սաղմ. 6. 6. Եսայ. 38. 19.]

26 * Մի՛ յամեսցես ներ մոլորութե ամբարշտաց. յառաջ քան զմահ խոստովանեա՛ց. 'ի մեռելոց իբրև ոչինչ կորնչի խոստովանութի :

27 * Խոստովան լիցիս կենդանի գոլով. կենդանի և ողջ խոստովանեսցիս. և գովեսցես զԱ՟Ծ. և պարծեսցիս 'ի գթութե նր :

28 * Զի որչափ մեծ է ողորմութիս Տ՟ն. և քաւութի նորա

անդրէն դարձողաց առ նա: * Ոչ և 29 ոչ ամէն կարեն գոլ ներ մարդկան. քանզի ոչ է անմահ որդի մարդոյ: Եւ ունայնութ̃ք ընդ չարութե հաճեցան:

* Զի՞նչ լուսաւորագոյն քան զարեգակն. սակայն և նա նուաղի. կամ զի՞նչ անագորոյն քան զոր խոկացաւ միս և արիւն. և այսու կշտամբի: 30

* Զզօրութի բարձրութե երկնի ինքն նկատէ. և մարդիկ ամէն հող և մոխիր: 31

## ԳԼ. ԺԸ.

Որ կենայ յաւիտեան. ստեղծ զամենեսեան 'ի միասին: Տ̃ր միայն արդարասցի. և մնայ անպարտելի յաւիտեան: 1 * Ո՞ բաւականանայ ճառել զգործս նորա: 2 * Ո՞ եւս հետազօտեսցէ զմեծութի նր: 3 * Իսկ զզօրութի մեծութե նորա ո՞վ պատմեսցէ. կամ ո՞ յաւելցէ վերպասանել զողորմութիւնս նր: 4 * Ոչ է նուազեցուցանել՝ և ոչ յաւելուլ. և ոչ է գտանել զմեծամեծս նյ: 5 * Յորժամ վախճանեսցէ մարդ՝ յայնժամ սկսանիցի. և յորժամ հանգչիցի, առծադեսցէ: 6 * Զի՞նչ է մարդ. և զի՞նչ է շնորհ նր. և ո՞վ է բարի. կամ զի՞նչ անձի չարութի նր: 7 * Թիւ աւուրց մարդկան որքան բազում, հարիւր ամբ. իբրև զկաթիլ ջրոյ ծովու առ համարեալ է: և ո՞ր զխիճ աւազոյ. այսպէս դուզնաքեայք ամք յաւուր երկարակեցի: 8

* Վասն այսորիկ երկայնամիտ է Տ̃ր առ նոսա. և հեղու 'ի վ̃ր նց զողորմութի իւր: 9 * Տեսեւ զյառաջումն սրտի նց՝ զի չար է. և ծանեաւ զտապալումն նց՝ քանզի չար է: 10 * Վ̃ա այսորիկ ելից զքաւութի իւր 'ի նս. և եցոյց նց զճանապարհ իրաւանց: 11 * Գթութի մարդոյ շուրջ զմերձաւորիւ իւրով. իսկ ողորմութի Տ̃ն 'ի վ̃ր ամ̃ի մարմնոյ: 12

* Որ զողորմութի ունի՝ ուսուցանէ. և առաջնորդէ իբրև հովիւ հօտի իւրոյ: 13

* Զորմի ընդունողին զուսումն ողորմութե. և որ փութայ յիրաւունս նր: 14

* Որդեակ, ներ բարեաց մի տայցես տրտունջանս. և ներ ամենայն տրոց մի տացես զտրտմութի բանի չարի: 15 * Ոչ ապաքէն զտապ զովացուցանէ ցօղ՝ այսպէս և բան բարեգոյն քան զտուրս: 16

* Ոչ ահաւասիկ բան 'ի վեր.քան զտուր բարի. այլ երկաքանչիւրն ընդ մարդոյ արդարացելոյ: 17 * Յիմարն դառնապէս նախատեսցէ. և տուրք անխրատի խորշակահար առնէ զաչս: 18 * Յառաջ քան զդատաստան պատրաստեա քեզ զարդարութի. և մինչև խօսեալ իցես՝ ուսի՛ր: 19 * Յառաջ քան զախտանալ՝ ընկալ զբժշկականութի. և յառաջ քան զդատաստան՝ հարց զքեզ ինքնին: և առաջի Տ̃ն գտցես զքաւութի: 20

21 * Յառաջ քան զխօթանալն՝ խոնարհեցո՛ զքեզ. և 'ի ժամանակի հիւանդութե ցոյց զանդրադարձութի քո:

22 * Մի՛ արգելցիս աղօթել միշտ. և մի՛ կասկածեսցես մինչև 'ի մահ արդարանալ. քանզի վարձ Տ̃ն մնայ յաւիտեան:

23 * Յառաջ քան զաղօթելն նախապատրաստեա զանձն քո. և մի՛ լինիր իբրև զմարդ՝ որ փորձէ զՏ̃ր:

24 * Յիշեա՛ զցասումն յաւուր կատարածի. և զժամանակ հատուցման յանդրադարձութե երեսաց:

25 * Յիշեա՛ զաղքատութի 'ի ժամանակի առատութե. և զհարկաւորութի յաւուր հարստութե:

26 * Յայգունէ մինչև ցերեկոյ փոփոխեսցի ժամանակ. և այսոքիկ ամենեքեան արագաթևեալք յաչս Տ̃ն:

27 * Մարդ իմաստուն ներ ամենայն զահի հարկանի. և 'ի ժամու յանցանաց ըզգուշանայ 'ի տգիտութէ:

28 * Ամենայն խորագէտ ճանաչէ զիմաստութի. և գտանելով զնա տացէ զխոստովանութի:

29 * Հանճարեղք բանիւք՝ և ինքեանք իմաստնաբար արարին. և իմացան զճշմարտութի և զիմաստութի: և անձրևեցին զառակս և զիրաւունս:

30 * Զհետ ցանկութե քոյ մի՛ գնասցես. 31 և 'ի կամաց քոց հրաժարեա՛ց: * Թէ բաշխեսցես անձին քոյ զցանկութիս նր, արասցէ զքեզ 'ի խնդութի թշնամեաց քոց:

32 * Մի՛ զբօսնուցուս ամբոխիւք՝ և մի՛ սակաւուք. զի երկարաձիգ է շաղախումն նոցա:

33 * Մի՛ լինիցիս միջամուխ 'ի գրգռութե առ 'ի վաշխէ. և դոյ քեզ ոչինչ 'ի քսակի. զի եղիցիս մախացող կենաց քոց:

## ԳԼ. ԺԹ.

1 Գործունեայ արբշիռ ոչ հասցի 'ի մեծութի. և որ արհամարհէ զսակաւն՝ փոքր փոքր կործանեսցի:

2 * Գինի և կանայք ապստամբեցուցանեն զիմաստունս. և ընդդիմադրեն զհանճարեղս:

3 * Իսկ որ զինքն լծէ ընդ պոռնիկս, եղիցի անօրէն. երբ՝ և որդունք սեպհականեսցեն զնա. և վերասցի 'ի նշաւակ մեծագոյն. և բարձցի 'ի թուոյ հոգի նր:

4 * Որ վաղվաղակի է 'ի հաւատալ՝ թեթևամիտ է. և փոքրկասցի. և որ զանցանէ զհոգւով իւրով. և ս առաւել ունիցի:

5 * Որ ուրախանայ անիրաւութե՝ նշաւակեսցի. և որ ատէ զյանդիմանութի, պակասեսցի կենօք. և որ ատէ զունայնախօսութի՝ շիջուցանէ զչարութի:

6 * Որ մեղանչէ յանձն իւր՝ զղջասցի. և

Margin notes: Ծննդ. 1. 1. — և յորժամ հանգչի ցնորաբար հառաչեսցէ — ‖ Սաղմ. 89. 10. — ‖ 1. Կորն. 11. 28. — ‖ Ղուկ. 18. 1. — 1 Թեսաղ. 5. 17. — ‖ [illegible] 7. 18. — ‖ [illegible] 11. 27. — ‖ Հռով. 6. 12. և 13. 14. — ‖ Ծննդ. 19. 33. — 3 Թագ. 11. 1. — ‖ [illegible] 22. 11.

և որ քաղցրանայ 'ի չարութիւն նշաւակեսցի։ 7 *Մի՛ կրկներ զբան զանիրաւ և զխիստ. և ո՛չ նուաստասցիս։ 8 *Բարեկամի և չարակամի մի՛ ճառեր զգացմունս քո. և թէ է քեզ մեղք. մի՛ 'ի բաց մերկանար։ 9 *Զի լուիցէ քեզ. և զգուշասցի զքէն. և իբրև զվրէժխնդիր մեղաց ատեսցէ զքեզ. և այսպէս առ լիցի քեզ միշտ։ 10 *Լուա՛ր զբան ընդդէմ մերձաւորի քոյ, մեռցի 'ի քեզ. հաւատացեալ զի ո՛չ պայթուցանէ զքեզ։ 11 *Յերեսաց բանի երկնէ յիմարն. որպէս հեծութիւն երկանց երախայի։ 12 *Նետ մխեալ 'ի բարձս մարմնոյ. այսպէս բան 'ի սրտի անմտի։ 13 *Յանդիմանեա՛ զբարեկամն. մի՛ գուցէ ո՛չ իցէ իմացեալ՝ և ասասցէ. ո՛չ արարի. կամ թէ արար՝ մի՛ ևս յաւելցի առնել։ 14 *Յանդիմանեա՛ զմերձաւորն. մի՛ գուցէ ոչ ասաց. և թէ ասաց՝ մի՛ գուցէ կրկնեսցէ։ 15 *Յանդիմանեա՛ զբարեկամն. զի բազմիցս լինի շարախաւսութիւն։ 16 *Եւ մի՛ ամենայն բանի հաւատասցես. է որ գթէ լեզուաւ. բայց ո՛չ է 'ի հոգւոյ։ 17 *Զի ո՞վ է՝ որ ոչ յանցեաւ լեզուաւ իւրով. յանդիմանեա՛ զմերձաւորն յառաջ քան զսպառնալն։ 18 *Եւ տո՛ւր տեղի երկիւղի բարձրելոյն. զի ամենայն իմաստութիւն երկիւղ Տ[եառ]ն. և 'ի նմա երկնչիլ յՏ[եառն]է. և նամենում իմաստութեան հակառակութիւն օրինաց։ 19 *Եւ ո՛չ է իմաստութիւն խրատ չարեաց. և ո՛չ է խորհուրդ մեղաւորաց՝ զգօնութիւն։ 20 *Է անիրաւութիւն և 'ի նմա գարշութիւն. և է անզգամ. որ նուազի յիմաստութենէ։ 21 *Լաւ է մարդ՝ որ նուազի իմաստութեամբ. և պակասեալ զգօնութեամբ ներ երկիւղով. քան որ առատանայ զգօնութեամբ. և անցանէ զօրինօք բարձրելոյն։ 22 *Է յաջողակութիւն ստոյգ. և ինքն անիրաւութիւն։ 23 *Եւ է որ արտաքս զբան ուղիղ ճառելով զճշմարտութիւն։ է որ ստաբար խոնարհեցուցանէ զինքն. և ներս նորա լի են նենգութեամբ։ 24 *Եւ է՝ որ զինքն յոյժ խոնարհեցուցանէ բազմաւ խոնարհութեամբ. և է՝ որ կորացուցանէ զդէմս իւր. և ամբացուցանէ՝ ոչ տեսանել զորինչ տգիտացաւ։ 25 *Եւ թէ 'ի տկարութենէ զօրութեանց արգելանի մեղանչել. եթէ գտանիցէ զժամանակ չար առնելոյ՝ չար առնէ։ 26 *Ի տեսութենէ ճանաչի այր. և 'ի հանդիպմանէ երեսաց ճանաչի իմաստունն։ 27 *Հանդերձ մարմնոյ. ծաղր երեսաց. և քայլ մարդոյ պատմեն զնմանէ։ 28 *Է յանդիմանութիւն սուտ բարկութեամբ թշնամանողի. և է դատաստան, որ փոր-

Ղևտ. 19.17. Մատթ. 18.15. Ղուկ. 17.3. Յակոբ. 3.3.

ձի ո՛չ գոլ բարի։ և է լուռ. և ինքն է հանճարեղ։

## Գլ. Ի.

1 Որքա՛ն կարի լաւ է յանդիմանել՝ քան ցասնուլ. և զհաւատարիմն բանիւ՝ ոչ արգելուլ։ 2 *Յանկութիւն ներքինւոյ անկուսացուցանէ զերիտասարդուհի։ 3 *Նոյնպէս որ առնէ բռնութեամբ զդատ անիրաւ։ 4 *Որքա՛ն բարի է յանդիմանեցելոյն բացայայտել զապաշաւանս. զի այսպէս փախիցես 'ի հաւանութենէ մեղաց։ 5 *Է լուռ՝ որ գտանի իմաստուն. և է ատելի՝ որ լիրբ է առ 'ի խօսիլ։ 6 *Է լուռ՝ որ ոչ ունի զզգօնութիւն խօսից. և է լուռ՝ որ գիտէ զժամանակ յարմար։ 7 *Այր իմաստուն լռեսցէ մինչև 'ի ժամանակն. իսկ անզգամն և ամբարիշտն ո՛չ պահեսցեն զժամանակս։ 8 *Որ բազմօք վարի բանիւք, վտանգէ զանձն իւր. և որ առնու ինքեան զիշխանութիւն անիրաւաբար՝ ատելի լիցի։ 9 *Է յառաջ ումն ներ չարաց առն անխրատի. և է գիւտ 'ի պատիժ։ 10 *Են տուրք՝ որք ո՛չ են օգուտք. և են տուրք՝ որոց հատուցումն է կրկնակի։ 11 *Է վ[աս]ն փառաց պակասութիւն. և է որ 'ի խոնարհութենէ վեր եբարձ զգլուխ։ 12 *Է որ զբազումս ազատեսցէ փոքու գնով. և հատուցումն ն[ոց]ա եօթնպատիկ։ 13 *Իմաստունն բանիւք ինքն զինքն սիրելի առնէ։ իսկ շնորհք մորոսաց հեղանիցին։ 14 *Տուրք անզգամի ո՛չ լիցի քեզ օգուտ. զի աչք ն[որ]ա առ եօթնպատիկս են։ 15 *Սակաւ տայցէ. և զբազումս նախատիցէ։ և բացումն բերանոյ ն[որ]ա բոցակիզութիւն է։ 16 *Այսօր փոխ տայ ոք. և 'ի վաղիւն պահանջէ. ատելի է այսու կերպիւ մարդ։ 17 *Մորոսին ո՛չ եղիցի բարեկամ. և ո՛չ եղիցի շնորհ բարեաց նորա։ 18 *Զի որք ուտեն զհաց նորա, ստալեզուք են. քանիցս՝ և ո՛րքան այպանեն զնա։ 19 *Զի և ոչ զորինչ ունելոց էր՝ ուղղի՛ւ զգօնութեամբ տարորոշեաց. նմանապէս և զորինչ ո՛չ էր ունելոց։ 20 *Գայթագղութիւն ստալեզուի. իբրև այն որ 'ի մուտս գայթագղի. այսպէս կործանումն չարաց վաղվաղակի հասցէ։ 21 *Մարդ ապաշնորհ՝ իբրև առասպել ընդունայն. 'ի բերան անխրատից հանապազորդ եղիցի։ 22 *Ի բերանոյ առասպելաբանի անգոսնի առակ. զի ո՛չ ասէ զնա 'ի ժամանակի իւրում։ 23 *Է որ արգելանի մեղանչել վ[աս]ն անընչութեան. և 'ի հանգստեան իւրում մտրակեսցի։ 24 *Է որ կորուսանէ զանձն իւր սակս ամօթոյ. և առ 'ի տգիտու-

թէ անձին կորուսանէ զնա։ * Նա որ 25 սակս ամօթոյ խոստանայ բարեկամի․ և շահեցաւ զնա թշնամի 'ի տարապարտուց։ * Նախատինք անիրաւք 'ի մարդ- 26 դոյ ստութենէ․ և 'ի բերանոյ անխրատից հանապազորդ եղիցի։ * Առաւել 27 լաւ է գող՝ քան զհանապազորդութի առն ստոյ։ զկորուստ երկոքեանն իսկ ժառանգեսցեն։ * Բարք մարդոյ ստոյ 28 թարց պատուոյ․ և ամօթ նորա ընդ ինքեանս անընդհատ։ * Իմաստունն բա- 29 նիւք վերաբերէ ինքն զինքն․ և մարդ խորագէտ հաճոյասցի մեծամեծաց։ * Որ գործէ զերկիր իւր՝ բարձրացուս- 30 ցէ զշեղջ ցորենոյ․ և որ գործէ զարդարութի, ինքն բարձրասցի․ իսկ որ հաճոյանայ մեծամեծաց՝ փախուսցէ զանիրաւութի։ * ‖ Ընծայ և պարգև կու- 31 րացուցանեն զաչս դատաւորի․ և իբրև համր բերանով դարձուցանէ զյանդիմանութիւնս նորա։ * Իմաստութի գաղեալ 32 և գանձ անյայտ․ զինչ շահեկանութի ներ երկոքանչիւրոց։ * Լաւագոյն է՝ 33 որ թաքուցանէ զանզգամութի իւր․ քան մարդ՝ որ գաղէ զիմաստութի։

‖ Ղեւտ. 23:8. 2. Օրէ. 16.19. Ծննդ. 41.17.

## Գլ. ԻԱ.

Որդեակ մեղար, մի եւս յաւելցես 1 'ի վերայ այլ և սակս առաջնոյն աղաչեա, զի թողցին քեզ։ * Իբրև յե- 2 րեսաց օձի փախիր 'ի մեղաց․ և թէ մերձեսցիս առ նոսա, ըմբռնեսցեն զքեզ։ * Ատամունք առիւծու՝ ատամունք 3 նորա․ միջատողք զհոգիս մարդկան։ * Որպէս 4 սուսեր երկսայրի ամենայն անիրաւութի․ հարուածոյ նորա ոչ գոյ բժշկութի։ * Սաստ և զրկանք ոչնչացուցանեն զգոյ- 5 ացութի․ և տուն որ կարի ընչաւէտ է՝ ոչնչանայ հպարտութեամբ․ այսպէս գոյութի հպարտի արմատաքի խլեսցի։ * Աղօթք աղքատի 'ի բերանոյ մինչև 6 յականջս նորա հասանիցի․ և իրաւունք փութապէս առ հասանիցի նմա։ * Որ 7 ատէ զյանդիմանութի, 'ի ճանապարհի մեղաւորաց է․ և որ երկնչի յԱստուծոյ՝ դառնայ սրտիւ իւրով։ * Յայտնի 'ի 8 հեռաստանէ հզօրն լեզուաւ հաւատարմաւ․ և զգօնն գիտէ զիջուցանել զինքն 'ի նմանէ։ * Որ շինէ զտուն իւր 9 ընչիւք օտարաց․ իբրև որ ժողովէ զքարինս իւր 'ի ձմերան։ * ‖ Խծուծ կու- 10 տեալ ժողովարան անօրինաց․ և կատարած նորա բոց հրոյ։ * Ճանապարհ 11 մեղաւորաց ողորկեալ քարիւք․ և 'ի վախճանի նոցա ստորինք՝ և խաւարք՝ և պատիժք։ * Որ պահէ զարդարութի․ 12 պարփակէ զզգացումն նորա։ * Կատա- 13 րած երկիւղի Աստուծոյ իմաստութի և զգօ-

‖ Ես. 16.7.

14 նութի։ * Ոչ խրատի․ որ ոչ է իմաստուն ներ բարուոք։ 15 * Զի է իմաստութի որ յաճախէ 'ի չարութի։ և ոչ է զգօնութի, ուրանոր է դառնութի։ 16 * Գիտութի իմաստնոյ իբրև զուղխ յորդեսցի․ և խորհուրդ նորա որպէս աղ- 17 բիւր կենաց յարամնայ։ * Սիրտ յիմարի իբրև աման ջախջախեալ․ և զամ 18 զիմաստութի ոչ ներընդունի։ * Զբան իմաստուն զոր միանգամ լուիցէ գիտունն, գովեսցէ․ և առ ինքն յանկեսցէ։ լուաւ անառողջն՝ և յափրասցի նովաւ․ 'ի բաց ընկեսցէ զնա 19 զկնի թիկանց իւրոց։ * Ճառ մորոսի իբրև քուրձ 'ի ճանապարհի․ զի 'ի շրթունս զգօնի գտանիցի շնորհ։ 20 * Բերան խորագիտի քննի յեկեղեցւոջ․ և զբանս նորա խոկասցեն 'ի սիրտս իւր- 21 եանց։ * Որպէս տուն արտաքսահմանեալ՝ այսպէս մորոսի իմաստութի․ և գիտութիւն անզգայայցելոյ անվիպելիք 22 բանք։ * Շղթայք յոտս յիմարաց իմաստութի․ և իբրև կապանք ձեռաց 'ի 23 վերայ ձեռին աջու։ * Յիմարն 'ի ծիծաղելն բարձրացուցանէ զձայնն․ իսկ այր իմաստուն հազիւ լռելեայն ծի- 24 ծաղեսցի։ * Զարդ ոսկեղէն խորագիտի ուսումն․ և իբրև ապարանջան 25 'ի բազկի աջում։ * Ոտք յիմարի դիւրընթաց 'ի տուն մերձաւորի․ և մարդ կիրթ պատկառի 'ի դիմաց կարողի։ 26 * Յիմարն 'ի լուսամուտէ հայեսցի 'ի տունն․ իսկ այր խրատեալ 'ի դուրս 27 կացցէ։ * Յիմարութի է մարդոյ ունկն դնել 'ի ձեռն դրան․ և խորագէտն ծան- 28 րասցի թշնամանօք։ * Շրթունք անհանճարից յիմարութեան ճառիցեն․ իսկ բանք հանճարեղաց, կշռորդով կշ- 29 ռեսցին։ * 'Ի բերանոջ մորոսաց սիրտ նոցա․ և ներ սրտում իմաստնոց բերան 30 նոցա։ * Երբ անիծանէ ամբարիշտն զսատանայ, անիծանէ ինքնին զանձն իւր։ 31 * [illegible]ունն պղծէ զանձն իւր․ և յամենեցունց ատի․ և որ ընդ նմա բնակեսցի՝ ատելագոյն եղիցի․ լուռն՝ և զգօնն պատուեսցի։

## Գլ. ԻԲ.

1 Քարիւ կուեղինաւ քարկոծեցաւ ծոյլն․ և ամենայն խօսին 'ի վերայ քամա- 2 հանաց նորա։ * 'Ի քակորէ եզանց քարկոծեցաւ պղերդն․ և ամ որ շօշափէ զնա, 3 թօթափէ զձեռն։ * Ամօթ հօր է՝ որդւոյ անխրատութի․ իսկ դուստր ներ 4 սորկագունութե եղիցի։ * Դուստր հանճարեղ ժառանգութի առն իւրոյ․ զի որ ամաչեցուցանէ 'ի նախատինս լի- 5 նի սերողաց։ * Զհայր՝ և զմայր յամօթ առնէ

առնէ համարձակն . և յամբարշտաց ոչ պակասի . բայց յերկաքանչիւրոցն անպատուհի ։ 6 * Երաժիշտներ սգում անդէպ պատմութիւն . խոշտանկութիւն և մակացութիւն յամենում ժամում իմաստութե̃ ։ 7 * Որ ուսուցանէ զմորոս . իբրու կծկէ ոք զխեցեղէն ։ 8 * Որ պատմէ զբան անլրոյ . իբրու զարթուցանէ ոք զքնած 'ի քնոյ ծանրէ ։ 9 * Ընդ քնածի խօսի . որ ճառէ յիմարի զիմաստութի . և յաւարտի ճառին ասէ՝ զինչ է այս ։ 10 * ‖ 'Ի վր̃ մեռելոյ կոծեա՛, զի պակասեցաւ լոյս նր̃ . և 'ի վր̃ մորոսի լա՛ց՝ զի պակասեցաւ զգօնութի նր̃ ։ 11 * Սակաւ լա՛ց 'ի վր̃ մեռելոյն՝ զի հանգեաւ ։ 12 * Զի չարագունի կեանք , չարագոյնք 'ի վեր քան զմահ մորոսի ։ 13 * ‖ Սուգ մեռելոյ զեօթն օր . իսկ մորոսին և ամբարշտին ամե՛ն աւուրք կենաց նր̃ ։

‖ Սիրք. 38. 16.
‖ Ծնն. 50. 10.

14 * Ընդ յիմարի մի՛ բազում խօսեսցիս . և ը̃ անմտին մի՛ գնասցես ։ 15 * Պահեա՛ զքեզ 'ի նմանէ . զի մի՛ վտանգեսցիս . և մի՛ շաղախեսցիս 'ի մեղս նր̃ ։ 16 * Խոտորեա՛ց 'ի նմանէ . և գտցես զհանգիստ . և ոչ դառնասցիս 'ի յիմարութե նր̃ ։ 17 * 'Ի վր̃ կապարի զինչ ծանրասցի . և եթէ նմա այլ իմն անուն քան զմորոս ։ 18 * ‖ Զաւազ՝ և զաղ՝ և զզանգուա՛ծ երկաթոյ դիւրին է բառնալ՝ քան զմարդ զանհանճար՝ և զմորոս՝ և զամբարիշտ ։

‖ Սիրք. 27. 3.

19 * Պահանգակապ փայտեղէն շարափակեալ ներ հիման շինուածոյ՝ ոչ կործանեսցի ։ այնպէս և սիրտ հաստատուն 'ի խոկման խորհրդեան ։ 20 * Խորհուրդ զգօնի յամենում ժամանակի , երկիւղի՛ ոչ թիւրեսցի ։ 21 * Որպէս ցից 'ի բարձունս՝ և շաղախ թարց կափուցման եդեալ ընդդէմ երեսաց հողմոյ ոչ կայասցին ։ 22 * Նոյնպէս և սիրտ երկչոտ 'ի խոկման յիմարի՝ ընդդէմ ընթացից երկչոտի ոչ ընդդիմասցի ։ 23 * Որպէս սիրտ դանդաղկոտ 'ի խորհրդեան մորոսի . ամենի՛ց ամանակաւ ոչ զանգիտեսցէ . այնպէս և որ ներ հրամանաց այ̃ ներկայանայ միշտ ։ 24 * Խթեալ ակն արտաբերէ զարտասուս . և որ խթէ զսիրտ , յառաջբերէ զզգօնութի ։ 25 * Որ ձգէ զքար թռչնոյ՝ ստորարկանէ զնա . այնպէս և որ նախատէ զբարեկամ , լուծանէ զբարեկամութի ։ 26 * Առ բարեկամ եթէ հանցես զսուր , մի՛ յուսահատիցիս ։ զի է անդրէն դարձումն առ բարեկամն ։ 27 * Եթէ բացցես զբերան տրտմութե՝ մի՛ երկիցես . զի է համակամութի 'ի բաց թողլով զանարգանս՝ և զնախատինս՝ և զհպարտութիւն՝ և զբացայայտութի խորհրդոյ . և զհարուածս խարդախս . յայսցանէ ամենից 28 փախիցի բարեկամ ։ * Զհաւատարմութի ստացի՛ր ընդ բարեկամի յաղքատութե նր̃ . զի և 'ի բարիս նր̃ ուրախասցիս ։ 29 * 'Ի ժամանակի նեղութեան նր̃ մնա՛ նմա հաւատարիմ . զի և ի՛ ժառանգութե նր̃ ժառանգակից լիցիս ։ 30 * Յառաջ քան զհուր հնոցի՝ մրրիկ և ծուխ հրոյ բարձրանայ . այնպէս և յառաջ քան զարիւն չարաբանութի . և թշնամանք՝ և սպառնալիք ։ 31 * Զբարեկամ ողջունել ոչ պատկառեցայց . յերեսաց նր̃ զիս ոչ թաքուցից ։ և թէ չարիք ինձ հասանիցեն 'ի ձեռն նորա ։ 32 տեսցից ։ * Ամենայն որ լուիցէ . զգուշացուցանիցէ զինքն յայնմանէ ։ 33 * ‖ Ո՛ տացէ բերանոյ իմոյ զպահապան . և 'ի վերայ շրթանց իմոց զկնիք հաւատարիմ . զի մի՛ անկեայց 'ի նոցանէ ։ և լեզու իմ կորուսցէ զիս ։

‖ Սաղմ. 140. 3.

## ԳԼ ։ ԻԳ ։

1 Տէ՛ր հայր՝ և իշխող կենաց իմոց՝ մի՛ թողցես զիս 'ի խորհրդեան նց̃ . մի՛ թողացուցես զիս գթիլ 'ի նոսա ։ 2 * Ո՞ վերակացուսցէ 'ի խորհեցման իմոյ զպատուհաս . և 'ի սրտի իմում զիմակացութի իմաստութե . զի տգիտութե̃ք նց̃ ոչ խնայեսցեն յիս . և մի՛ երևեսցին յանցանք նոցա . 3 * Զի մի՛ յաճախեսցին տգիտութե̃ք իմ . և բազմապատկեսցին յանցանք իմ՝ և մեղք իմ յոլովասցին . և կործանայցեմ առաջի ընդդիմահարաց իմոց . և ուրախասցի 'ի վերայ իմ թշնամի իմ ։ 4 * Տր̃ հայր . և Ա̃ծ կենաց իմոց . մի՛ թողցես զիս 'ի մտածման նոցա . 5 * Բարձրայօնութի աչաց մի՛ տայցես ինձ . և զամենայն տոփումն դարձո՛ յինէն ։ 6 * 'Ի բա՛ց տար յինէն զցանկութի որովայնի . և անկողինք ցանկութե մի՛ ըմբռնեսցեն զիս . և անձին անարգի և ապշելոյ մի՛ մատնեսցես զիս ։ 7 * Զուսումն բերանոյ լուարո՛ւք որդիք . և որ պահեսցէ զնա՝ ոչ կորիցէ շրթամբք . և ոչ գայթագղեսցի 'ի գործս անօրէնագոյնս ։ 8 * Յընդունայնութե իւրում ըմբռնի մեղաւոր . և հպարտն՝ և հայհոյիչն գայթագղեսցի 'ի նմ̃ ։ 9 * ‖ Երդման մի՛ ընդելացուսցես զբերանքո . զի բազում վրիպումն է 'ի նմա ։ 10 * Եւ անուանումն այ̃ մի՛ լիցի հանապազորդենի՛ց երդմամբ 'ի բերանի քում . և յանուանս սրբոց մի՛ շաղախեսցիս . զի ոչ եղիցիս անպարտ 'ի նոցանէ ։ 11 * Զի որպէս ծառայ լեզուանի հանապազ 'ի հարուածոյ ոչ մեղմանայ . այնպէս ամենայն երդմնահար , և անուանող , բոլորովին 'ի մեղաց ոչ քաւեսցի ։ 12 * Այր բազմերդումն

‖ Ելից. 20. 7.
Մտթ. 5. 33.

դումն

ծ ո՛չ հե տայցէ

գումն լնանի անխրատութբ̃ . և ո՛չ իջա նիցէ 'ի տանէ նր̃ հարուած ։ *Եւ՛ թէ 13 զրպարտեսցէ՝ յանցանք նորա 'ի վերայ ինքեան եղիցի ։ և թէ խորամանկեսցէ յանցեաւ երկպատկաբար ։ *Եւ՛ եթէ 14 ընդունայն երդնուցու , ո՛չ արդարասցի. զի անդրէն լցցի փոխարինաւ տուն նորա ։ *Ի. և այլ զրոյց հանդէտ մահու . մի՛ գտցի 'ի ժառանգութե Յակոբու ։ 15 *Ոչ յողորմածաց ամենեքեան 16 այսոքիկ 'ի բաց բարձցին . և նեք յանցանաց ո՛չ թաւալեսցին ։ *Անխրատականին զրուցին մի՛ կրթեսցի բերան քո . զի է 'ի նմա բան մեղաց ։ 17
*Յիշեա՛ զհայր և զմայր քո՝ զի 'ի մէջ 18 մեծամեծաց կայցես ։ *Մի՛ գուցէ մոռացեալ քեզ լիցի Ա.ձ առաջի աչաց 19 նոցա . և հանապազորդութբ̃ քով յիմարացեալ զնախատինս կրեսցես . և յաւէտ կամեսցիս ո՛չ ծնանիլ . և զօր ծննդեան քոյ նզովեսցես ։ *Մ Մարդ 20 հանապազորդեալ 'ի բանս մեղադրանաց՝ յամենսեան աւուրս իւր ո՛չ խրատեսցի ։ * Երկու սեռք յաձախեն 'ի 21 մեղս . և երրորդն առբերէ զբարկութի . և զկորուստ ։ *Անձն բարկ՝ իբրև 22 զհուր վառեալ ո՛չ շիջանի՝ մինչև զայլումն կլանիցէ ։ *Եւ մարդ չարաբարոյ 23 'ի բերան մարմնոյ իւրոյ՝ ո՛չ դադարի , մինչև բորբոքեսցէ զհուր ։
*Մարդոյ պոռնկացելոյ ամենայն հաց 24 քաղցր . ո՛չ լքանիցի արտագնացեալ մինչև 'ի սահման ։ *Ամենայն մարդ՝ 25 որ արտագնայ զանկողնիւ իւրով , արհամարհեալ յանձն իւր՝ և ասացեալ ։
*Մ Ո՛վ զիս տեսցէ . խաւարք շուրջ պատեն 26 զինև . և որմունք ծածկեն զիս . և ոչո՛ք շուրջ հայիցի զինև . յորմէ կասկածիմ ։ զյանցանս իմ ո՛չ յիշեսցէ բարձրեալն ։ *Եւ՛ ո՛չ իմանայ՝ քանզի 27 զամենայնան տեսանէ ակն նորա . զի մերժէ յինքենէ զերկիւղն Ա.Յ՝ ըստ այսմ եղանակի մարդոյ երկիւղ՝ և աչք մարդկան երկնչօղք 'ի նմանէ ։ *Եւ՛ ո՛չ 28 ձանաչեաց՝ զի աչք Տն բազմապատիկ առաւել լուսաւորք են գեր քան զարեգակն . շրջահայեացք ընդ ա̃մն ձանապարհս մարդկան . և զխորս անդնդոյ . և զսիրտս մարդկան նկատօղք 'ի մասունս գաղտնիս ։ * Ոչ Տն Ա.Յ մինչ 29 չև ստեղծեալք իցեն , ամբեան են ծանուցեալք . այսպէս և յետ կատարմանն վերադիտէ զա̃մն ։ *Ասա նեք հրա 30 պարակաց քաղաքիս յաղթեսցի . և իբրև զմորուկ ձիոյ փախիցի . և ուր ո՛չ ակնկալաւ՝ ըմբռնեսցի ։ *Եւ՛ եղիցի 31 տգեղութի ամենեքումբք . այնու զի ոչ հասկացաւ զերկիւղ Տեառն ։

Մ2 Թագ. 16.7.

Մ Եսայ. 29. 15.

32 *Մ Այսպէս և ա̃մ կին 'ի բացթողոզ զայր իւր՝ և կացուցանօղ զժառանգութի յօտարէ ամուսնութէ ։ 33 *Ոչ նախ՝ յօրինի բարձրելոյն անհաւանեցաւ . երկրորդին՝ յայր իւր յանցեաւ ։ երրորդանգամ՝ շնութբ̃ պոռնկեցաւ ։ և յառնէ յայլմէ զորդիս կացոյց ինքեան ։ 34 *Այս 'ի ժողովն առբերցի . և յորդիս 35 նորա հայեսցի ։ *Մի՛ 'ի ձեռն տացեն որդւոց նորա արմատս . և ոստք նր̃ մի՛ 36 տացեն զպտուղ ։ * Թողցէ յանէծս զյիշատակ նր̃ . և տգեղութի նորա մի՛ 37 ջնջեսցի ։ *Եւ՛ ծանիցեն՝ որք թողանն. զի ոչինչ բարեգոյն է քան զերկիւղն Ա.Յ՝ և ոչինչ քաղցրագոյն , քան ակն 38 արկել 'ի պատուիրանս Տն ։ * Փառք մեծք են հետևիլ Տն . զի երկարութի աւուրց առնանի 'ի նմանէ ։

Մ Առ. 20. 10. 2. Օրէ. 22.22.

## ԳԼ. ԻԴ.

1 Օ գօնութի գովեսցէ զանձն իւր . և առ Ա.ձ պատուեսցի . և 'ի մէջ ժողովրդեան իւրոյ փառաւորեսցի ։ 2 * Եւ՛ յեկեղեցիս բարձրելոյն բացցէ զբերան իւր . և առաջի երեսաց զօրութե նր̃ պարծեսցի ։ 3 *Եւ՛ 'ի մէջ ժողովրդեան իւրոյ ցնծասցէ . և 'ի լրութե 4 սրբուն զարմասցի ։ *Եւ՛ 'ի բազմութե ընտրելոց ունիցի պգովութի . և նեք օրհնեցելոց օրհնեսցի ասելով ։ 5 *Ես 'ի բերանոյ բարձրելոյն յառաջ եկի . անդրանիկ նախ քան զա̃մ ստեղ 6 ծուածս ։ * Ես արարի յերկինս՝ զի ծագեսցի լոյս անպակաս . և իբրև զմէգ 7 ծածկեցի զա̃մ երկիր ։ * Ես 'ի բարձունս բնակեցայ . և աթոռ իմ սիւն 8 ամպոյ ։ * Ոչ շրջանակս երկնի շրջեցայ միայնակ . և ընդ խորս անդնդոց յածայ . և յալիս ծովու ընթացայ ։ 9 *Եւ՛ նամենում երկրում կացի . և նա 10 մենում ժողովրդեան ։ *Եւ՛ նամենում 11 ազգում յառաջումն ստացայ ։ *Եւ՛ ամենեցուն բարձրագահից և նուաստից զսիրտս զօրութբ̃ կոխեցի ։ և 'ի նոսա ամենեցուն զհանգիստ խնդրեցի . և 'ի 12 ժառանգութե Ա.Յ մնացից ։ * Յայն ժամ պատուիրեաց՝ և ասաց ինձ ստեղծիչն ամենեցուն . և որ ստեղծ զիս՝ վերահանգոյց 'ի տաղաւարում իմում ։ 13 *Եւ՛ ասաց ինձ . 'ի մէջ Յակոբու բնակեա՛ց՝ և յիէլ ժառանգեա՛ց . և յընտ 14 րեալս իմ ձգեա՛ զարմատս քո ։ *Մ Ի սկզբանէ՝ և յառաջ քան զյաւիտեանս ստեղծայ . և մինչև յապառնի յաւիտեան ոչ վերջանամ . և 'ի բնակութե 15 սրբոյ առաջի նորա պաշտեցի ։ * Եւ՛ այսպէս 'ի սիոն հաստատեցայ . և 'ի քաղաքի սրբեցելում նմանապէս հանգեայ .

Մ Առակ 8.22.

և

16 և յեհէմ իշխանութիւն իմ ։ * Եւ արմատացայ 'ի մէջ ժողովրդեան պատուեցելում, և 'ի մասին Այ̃ իմոյ՝ ժառանգութիւն նորա ։ և 'ի լրութեան սրբոց վրանահարութիւն իմ ։ 17 * Իբրև զմայր բարձրացեալ եմ 'ի Լիբանանու • և իբրև զսարդ 'ի լերինն Սիոն ։ 18 * Իբրև արմաւենի բարձրացեալ եմ 'ի կադէս • և իբրև զտունկ վարդոյ յերիքով ։ 19 * Եւ իբրև ձիթենի գեղեցկագոյն 'ի դաշտի • և իբրև զՍօս բարձրացեալ 'ի գնացս ջուրց 'ի հրապարակի ։ 20 * Որպէս կինամոմոն • և պալասամ • և հալուէ զհոտ ետու ։ Իբրև զմուռ ընտիր ետու զանուշութիւն հոտոյ ։ 21 * Եւ իբրև զստորակս • և զգալբանոս • և զօծանելի • և զտաշխ • և իբրև զլիբանոս անհատ մի զապատեցի զբնակութիւն իմ • և իբրև զպալասամ զուտ հոտ իմ ։ 22 * Եւ իբրև զկաղամախս արձակեցի զոստս իմ • և ոստք իմ պատուոյ և շնորհի ։ 23 * Եւ իբրև զորթ պտղաբերեցի զհամեղութիւն հոտոյ • և ծաղիկք իմ պտուղք պատուոյ և համեստութեան ։ 24 * Եւ մայր գեղեցիկ տարփման • և երկիւղի, և գիտութեան և սրբոյ յուսոյ ։ 25 * Ինև շնորհ ամ̃ ճանապարհի և ճշմարտութեան • ինև ամ̃ յոյս կենաց՝ և զօրութեան ։

26 * Առ իս անցէք ամենեքեան՝ ոյք ցանկայք ինձ • և 'ի տոհմականաց իմոց լցարուք ։ 27 * Զի հոգի իմ գեր քան զմեղր քաղցր • և ժառանգութիւն իմ 'ի վեր քան զմեղր և զխորիսխ ։ 28 * Յիշատակ իմ յազգս յաւիտենից ։ 29 * Որք ուտեն զիս, և ևս քաղցիցեն • և ոյք ըմպեն զիս, և ևս ծարաւիցեն ։ 30 * Որ լսէ ինձ • ոչ ամաչէ • և որք գործեն ինև, ոչ մեղանչեն ։ 31 * Այք պայծառացուցանեն զիս, զկեանս յաւիտենականս ստասցեն ։ 32 * Այսոքիկ ամենեքեան գիրք կենաց • և կտակարանք բարձրելոյն • և ծանօթութիւն ճշմարտութեան ։ 33 * Զօրէն պատուէրեաց Մովսէս 'ի հրամանս արդարութեանց • և ժառանգութիւն տանն Յակոբու • և իշխ զխոստմունս ։ 34 * Եդ դաւիթ որդւոյ իւրոյ զարթուցանել զթագաւոր 'ի նմանէ զհզօրագոյն • և յաթոռոջ պատուոյ զնստումն զմշտնջենաւոր ։ 35 * ‖ Որ լնու իբրև զփիսոն զիմաստութիւն՝ և որպէս զտիգրիս յաւուրս նորոց ։ 36 * Որ առլնու իբրև զեփրատ զզգօնութիւն • ‖ որ բազմապատկէ իբրև զյորդանան 'ի ժամանակի հնձոց ։ 37 * Որ առաքէ զխրատ իբրև զլոյս • և կանգնոզ իբրև զգեհօն յաւուրս կթոց ։ 38 * Որ կատարէ նախկին գիտել զինքն • և տկարագոյնն ոչ հետազօտեսցէ զնա ։ 39 * Զի 'ի ծովէ առաւելեցաւ խոկումն նորա • և խորհուրդ նորա 40 յանդնդոյ մեծէ ։ * Եւ իմաստութիւն 41 արտահեղի զգետս ։ * Եւ իբրև զջրմուղ ջրոյ անչափոյ 'ի գետոյ • ես իբրև գետոյ վտակ • և որպէս ջրադնաց առ 42 տաելի 'ի դրախտէն ։ * ասացի ։ Ոռոգեցից զպարտէզ իմ տնկոց • և արբե43 ցուցից բողբոջի իմոյ զպտուղ ։ * Եւ ահա եղև ինձ առու յորդ • և հոսան իմ 44 մերձեցաւ առ ծով ։ * Քանզի զմակացութիւն իբրև զառաւօտ լուսաւորեմ ամենեքումբք • և վիպասանեցից զնմա45 նէ մինչև առ բազակայս ։ * Յածեցայց յամենեսեան կողմունս երկրի ներքինս • և նկատեցից յամենեսեան ննջեցեալս • և լուսաւորեցից զամենե46 սեան յուսացօղս 'ի Տր̃ ։ * Եւ ևս զմակացութիւն իբրև զմարգարէութիւն սփռեցից • և թողից զնա խնդրողաց զիմաստութիւն • և ոչ թողլ տաց ծննդոց նոցա 47 մինչև յարակայութիւնն սր̃բ ։ * ‖ Տեսէք զի ոչ ինձ միայնոյ վաստակեցի • այլ ամենեցուն խնդրողաց զճշմարտութիւն ։

## ԳԼ. ԻԵ.

1 Երեք բարեհաճոյացան հոգւոյ իմոյ • որք են ընտիրք առաջի այ̃ և 2 մարդկան ։ * Միաբանութիւն եղբարց • և սէր մերձաւորաց • և այր և կնոջ բարւոք առ իրեարս համակամութիւն ։ 3 * Զերիս տեսակս ատեաց անձն իմ • և տաղտկանամ կարի յոյժ յանձանց 4 նց̃ ։ * Յաղքատէ հպարտէ • 'ի մեծատանէ ստոյ • 'ի ծերոյ զեղխէ՝ և անըզգ5 այէ ։ * Զորս 'ի մանկութեան քո ոչ հաւաքեցեր, զիարդ 'ի ծերութեան 6 գտանիցես ։ * Զիարդ վայելչագոյն է ալևորի դատաստան • և աւա7 գաց ճանաչել զխորհուրդ ։ * Զիարդ գեղեցկագոյն հնագունից իմաստութիւն • և փառաւորագունից իմացա8 կանութիւն և խորհուրդ ։ * Պսակ ծերոց հմտութիւն • և փառք նց̃ երկիւղն 9 Այ̃ ։ * Զիններորդն առանց կարծեաց սրտի մեծացուցի ։ և զտասներորդն ասացից լեզուաւ մարդկան ։ 10 * Մարդ որ զուարճանայ յորդիս ։ կենդանի և տեսանող զկործանումն թշնա11 մեաց իւրոց ։ * ‖ Երանելի է՝ որ բնակի ընդ կնոջ զգօնի • և որ լեզուաւ իւրով ոչ է վրիպեալ ։ և որ ոչ ծառայ12 եաց անարժանից իւրոց ։ * Երանելի է՝ որ եգիտ զբարեկամ ճշմարիտ ։ որ ճառէ զճշմարտութիւն յունկն լսողի ։ 13 * Որքան մեծ է՝ եթէ ոք գտանէ զիմաստութիւն՝ և զգիտութիւն • այլ ոչ է 14 գեր քան զերկիւղած Տն̃ ։ * Երկիւղն Տն̃ 'ի վեր քան զամ̃ն զինքն գերադրէ ։

* Երա_

Ծննդ. 2.11.

Յեսու. 3.15.

Վար. 33.18.

Վար. 26.1.

Վէր. 14.1. և 19.16.

15 *Երանեալ է մարդ՝ որոյ պարգեւեալ է ունել զերկիւղն Այ։ որ գրկէ զնա՝ որո՛յ համեմատեսցի։ 16 *Երկիւղն Այ սկիզբն սիրոյ նորա․ բայց հաւատոյ սկիզբն առակցելի է նմա։ 17 *Ամենայն հարուած տրտմութիւն է սրտի․ և ամ չարութիւն անիրաւութիւն կնոջ։ 18 *Ամ զամ զհարուած․ և զոչ հարուած սրտի տեսցէ։ 19 *Ամ զամ զանիրաւութիւն․ և զոչ անիրաւութիւն կնոջ։ 20 *Ամ զամ զգումարումն․ և զոչ զգումարումն ատելեաց։ 21 *Ամ զամենայն զյաղթութիւն․ և զոչ յաղթութիւն թշնամեաց։ 22 *Ո՛չ է գլուխ անիրաւ ՚ի վեր քան զգլուխ օձի։ 23 *Ամ ո՛չ է բարկութիւն ՚ի վեր քան զբարկութիւն կանանց։ ‖Բնակել ընդ առիւծոյ և վիշապի հաճոյասցի․ քան բնակել ընդ կնոջ չարաբարոյի։ [Առակ․ 21․19․]

24 *Չարաբարոյութիւն կնոջ փոփոխէ ըզդէմս նորա․ և խանդարէ զերեսս իւր իբրեւ զարջ։ և իբրեւ զխորդ ցուցանէ։

25 *՚Ի մէջ մերձաւորաց նորա հեծէ այր նորա․ և լուեալ հառաչէ սակաւիկ մի։

26 *Համառօտիք՝ ամ չարութիւն ՚ի վն չարութե կնոջ․ վիճակ մեղաւորաց անկցի ՚ի վերայ նր։ [Յոյժ․ է ամ] 27 *Ոպ ելք աւազուտ ՚ի ներքոյ ոտից ծերոյ․ այսպէս կին լեզուանի մարդոյ հեզոյ։ 28 *‖Մի հայեսցիս ՚ի տեսս կնոջ․ և մի ցանկասցիս կնոջ ՚ի գեղեցկութե։ [‖Սիր․ 42․6․] 29 *Կնոջ բարկութիւն․ և անարգութիւն․ և ամօթ մեծ։

30 *Կին եթէ զնախորդն ունիցի՝ ներհակ է առն իւրոյ։ [զնախոր_ դութե] 31 *Սիրտ խոնարհ․ և դէմ տրտում․ և հարուած սրտի կին չարաբարոյ։ 32 *Ձեռք լքեալք․ և ծունկք կթուցեալք․ կին, որ ոչ երանէ զայր իւր։ 33 *‖՚Ի կնոջէ է եղեալ սկիզբն մեղաց․ և ՚ի ձեռն նր ամենեքեան մեռանիմք։ [Ծննդ․ 3․ 6․] 34 *Մի տայցես ջրոյ քոյ արտահոսումն․ և ոչ դոյզն մի։ և ո՛չ կնոջ չարաբարոյի զգիւտ հեռանալոյ։ 35 *Եթէ ոչ շրջիցի ընդ ձեռամբ քով․ ամաչեցուսցէ զքեզ առաջի աչաց թշնամեաց։ [զներգումն հեռանալոյ]

36 *՚Ի մարմնոյ քոյ հատ զնա․ զի մի միշտ զքեզ ՚ի վնաս կրթեսցէ։

## ԳԼ․ ԻԶ։

1 Կնոջ բարւոյ՝ Երանելի է այր․ զի թիւ ամաց նորա կրկնապատիկ։

2 *Կին հզօր ընդարձակէ զայր իւր․ և զամս կենաց նր խաղաղութեամբ լցուսցէ։

3 *Բաժին բարի՝ կին բարի․ ներ բաժնում երկիւղածաց Տն տացի առն փոխանակ արարելոց բարեաց։ 4 *Փարթամին և աղքատին սիրտ բարի․ նամենում ժամանակի երեսք նոցա զուարթք։ 5 *Յերից երկեաւ սիրտ իմ․ ՚ի չորրորդէն երեսք իմ զանգիտեցին։

6 *Զքսութիւն քաղաքացւոյ․ և զհաւաքումն ժողովրդեան։ 7 *Զզրկումն տարապարտուց․ և վեր քան զամենեսեան ծանունս զմահ։ 8 *Ցաւ սրտի և գոյժ, կին նախանձոտ։ 9 *՚Ի կնոջէ նախանձոտէ տանջանք լեզուի (զամենեսեան) ամենեցուն մասնակցօղ։

10 *Որպէս եզանց լուծ՝ որ շարժի․ այսպէս և կին չարաբարոյ․ որոց ունի զնա, իբրու ոք բուռն հարկանէ զկարճէ։

11 *Կին արբեցօղ՝ բարկութիւն մեծ․ անարգանք և գարշութիւն նր ոչ ծածկին։

12 *Պոռնկութիւն կնոջ ՚ի վերամբարձմանն աչաց նր․ և յարտեւանունս նորա ծանիցի։

13 *‖՚Ի վերայ դստեր ոչ դարձուցանողի զինքն՝ հաստատեա զզգուշութիւն։ մի գտեալ զառիթ կրթեսցէ զինքն։ [‖Սիր․ 42․ 11․] 14 *Յամէ անարգութենէ աչաց նր զգուշասցիր․ և մի սքանչասցիս, թէ զքեզ անգոսնեսցէ։ 15 *Որպէս ճանապարհորդ ծարաւի առ աղբիւր զբերան բանայցէ․ և յամէ ջրոյ մերձաւորէ ըմպիցէ․ և ընդդէմ ամի բրի նստիցի․ և հանդէպ ամի նետի բացցէ զկապարճ, մինչև պակասեսցի։ 16 *Շնորհ կնոջ հպատակի՝ յօրացուցանիցէ զայր իւր․ և զոսկերս նորա պարարեսցէ։

17 *Խրատ նորա, տուրք Տն են։

18 *Կին զգօն և լուռ․ ոչ է փոխարկութիւն վարժեցելոյ անձին։ 19 *Շնորհ ՚ի վն շնորհի կին սուրբ՝ և պատկառօղ։

20 *Ամենայն իսկ ծանրակշիռ ո՛չ է արժանի անձին ժուժկալի։ 21 *Որպէս արեգակն ծագեալ աշխարհի ՚ի բարձրութեան Տն․ այսպէս կնոջ բարւոյ տեսակ ՚ի զարդ տան նր։ 22 *Ճրագ ճառագայթեալ յաշտանակի սրբոյ․ և տեսակ պատկերի ՚ի վերայ հասակի հաստատնոյ։ 23 *Սիւնք ոսկեղէնք ՚ի վերայ խարսխաց արծաթեղինաց․ և ոտք հաստատունք ՚ի վն թաթից կնոջ կայնոյ։

24 *Հիմն մշտնջենաւոր ՚ի վերայ վիմի հաստատնոյ․ և պատուիրան Տն ՚ի սրտում կնոջ սրբոյ։ 25 *Երկոքումբք տրտմեցաւ սիրտ իմ․ և երիւք ցասումն զիս եգիտ։ [և երր] 26 *Այր պատերազմօղ պակասեալ ՚ի ձեռն աղքատութե։ և այր զգօն անգոսնեալ։ 27 *Ամ որ արտադրնթանայ յարդարութէ առ մեղս․ Տր պատրաստեաց զնա ՚ի նիզակս։

28 *Երկու տեսակք դժուարինք և վշտագինք ինձ երեւեցան․ դժուարաւ ծախիցի զբաղեալ դժպատեհութեն․ և ոչ արդարասցի բաժակավաճառն ՚ի ծոյլ մեղաց շրթանց։

## Գլ: ԻԷ:

Վասն կարօտութեան բազումք մեղան. 1 և որ կամի հարստանալ՝ դարձուսցէ զական իւր : *Որպէս 'ի մէջ շարագրութեան քարանց սամոյթք մխին. այնպէս 2 և 'ի մէջ վաճառի և գնելոյ նեղեսցի մեղք : *Կործանին հանդերձ յանցաւորաւն 3 յանցանք : *Եթէ ոչ յերկիւղ Տն̃ 4 յեցուսցես զքեզ հաստատութեամբ. փութով հիմնայատակ լինի տուն քո : *Որպէս 5 խարբալման խախալի մնասցէ փոշի. այնպէս կարօտութի մարդոյ 'ի մտածութեան նորին : *Զանօթ բրտի թրծէ 6 հնոց. և զմարդս արդարս փորձութիւն տառապանաց : *Զպտ̃ երկրագործութիւն 7 'ի ծառոյն ցուցանէ զպտուղ նորա. այնպէս բան 'ի խորհրդոյ սրտի մարդկան : *Յառաջ քան զխօսս մի՛ գովեր 8 զայր՝ զի և այս փորձութիւն է մարդկան : *Եթէ հետևեսցես արդարութեան՝ ըմ 9 բռնեսցես զնա. և զգեցցիս իբրև ըզպճղնաւորս պատուոյ : և բնակեսցես ը̃ նմա՝ և հովանաւորեսցէ քեզ 'ի մշտնջենաւոր. և յաւուր ծանօթութեան գտանիցես զհաստատութիւն : *Թռչունք 10 առ իւրեանց նմանիս շարադասին. և ճշմարտութիւն առ այնոսիկ՝ որք գործեն զնա՝ վերադառնայ : *Առիւծ որսոյ 11 դարանակալի միշտ. այսպէս մեղք գործողաց զանօրէնութիւնս : *Մարդ սը̃ 12 ներ իմաստութեան կայանայ՝ որպէս արեգակն. իսկ յիմարն որպէս լուսին փոփոխի : *'Ի մէջ խելագարաց պահեա՛ 13 զբան ժամանակի. իսկ 'ի մէջ խոկացողաց հանապազորդ լե՛ր : *Ճառ մե 14 ղանչողաց ատելագոյն. և վարք նոցա ներ փափկութեամբ մեղաց : *Զրոյց 15 բազմերդումն զխիզացումն գլխոյ կացուսցէ. և անարգութիւն ինքեան զխը ցումն ունկանց : *Հեղումն արեանն ներ 16 վիճմանն հպարտից. և անէծք նց̃ լուր ծանր : *Որ մերկացուցանէ զգաղտնիս 17 բարեկամի, զհաւատ կորուսանէ. և ոչ գտցէ զբարեկամ ը̃ անձին իւրոյ : *Սիրեա՛ զբարեկամ քո. և ընդ նմա 18 հաւատով լե՛ր : *Զի եթէ մեր 19 կացուսցես զծածուկս նորա. մի՛ ևս հետևեսցես զկնի նորա : *Զի որպէս 20 մարդ որ կորուսանէ զբարեկամ իւր. այսպէս և որ կորուսանէ զբարեկամութիւն մերձաւորի իւրոյ. *Եւ որպէս որ 21 թողու զհաւ 'ի ձեռանէ իւրմէ. այսպէս 'ի բաց թողեր զմերձաւոր քո. և զնա ոչ ևս որսասցես : *Մի՛ հետևեսցես 22 նմա. զի կարի բացեայ է. քանզի փախեաւ իբրև այծեամն յորոգայթէ : վասնզի վիրաւորեալ է անձն նորա :

ձթ

23 *զի այլևս ոչ կարես զնա կապել : Եւ 24 անիծելոյ է համակամութի : *այլ մերկել զխորհուրդս բարեկամի † : *Ակնառկեալ աչօք չինէ զանիրաւութիւնս. և 26 ոչ՛ք զնա 'ի բաց ձգեսցէ : *Առաջի աչաց քոց քաղցրացուսցանիցէ զբերան իւր. և 'ի վերայ բանից զարմանասցէ. իսկ յետոյ դարձուսցէ զբերան իւր. և բանից քոց տացէ զգայթագղութի : 27 *Զբազումս ատեցի. և ո՛չ համեմատեցի նմա. և Տր̃ ատեսցէ զնա : 28 *Որ 'ի բարձունս զքար ձգէ, 'ի վերայ գլխոյ նորա անկցի. և հարուած նենգաւորի որոշեսցէ զցաւս : 29 *Եւ որ զհոր փորէ՝ անկցի 'ի նոյն. և որ կանգնէ զքար մերձաւորի, գթեսցի 'ի նմա : և որ զորոգայթ այլոյ դնէ, կորիցէ նովիմ : 30 *Զխորհուրդ արարողին զանօրէնագոյն 'ի վերայ ինքեան վերադիցէ. և ոչ ճանաչիցէ ուստի եկեսցէ նմա : 31 *Մըխպումն՝ և նախատինք ամբարտաւանից՝ և վրէժխնդրութի որպէս 32 առիւծ դարանակալեսցի նմա : *Որոգայթիւ կորիցեն՝ որք զուարճանան անկմամբ արդարոյ : իսկ ցաւ վճարեսցէ զնոսա մինչև մեռեալք իցեն : 33 *Ցասումն և բարկութի երկաքանչիւրքն գարշելիք են. և այր մեղաւոր պարունակօղ եղիցի նց̃ :

† է յասա հաստալէ հոգւոյ աղերջան կէ

## Գլ: ԻԸ:

1 Որ ‖ վրէժխնդրել կամի. 'ի Տէ գտցէ զվրէժխնդրութի. և մեղք նորա 2 պահելով պահեսցի : *Թո՛ղ մերձաւորին քոյ զվնասողին քեզ. և յայնժամ քեզ մաղթողիդ մեղանք թողցին : 3 *Մարդ մարդոյ վերապահէ զոխ. և 'ի Տէ խնդրէ զբժշկականութիւն : 4 *Առ մարդ նման ինքեան ոչ ունի զգթութի. և սակս մեղաց իւրոց մաղ 5 թէ : *Ինքն երբ մինեղի է՝ պահէ զոխ. և զքաւութի խնդրէ յայ̃. ո՛վ աղօթեսցէ 6 վասն յանցանաց նր̃ : *Յիշեա՛ զնո բադոյնսն. և 'ի բա՛ց թող զթշնամա 7 նել : *զի հաշումն և մահ սաւիպեն 'ի 8 պատուիրանս նր̃ : *Յիշեա՛ զերկիւղն այ̃. և մի՛ բարկասցիս մերձաւորին : 9 *Յիշեա՛ զկտակարանս բարձրելոյն. և անտես արա զտգիտութի մերձաւո 10 րի : *Իբա՛ց տար զքեզ 'ի գրգռութենէ. 11 և նուաղեցուսցես զմեղս : *Զի մարդ բարկացօղ բորբոքէ զվէճ. և այր մեղաւոր խռովէ զբարեկամս : և 'ի մէջ զխաղաղութի ունողաց արկանէ զթշ 12 նամութի : *Զի ըստ փայտից անտառի, հուր այրի. և ըստ զօրութեան մարդոյ՝ բարկութի նորա եղիցի : և ըստ կն̃ գոյացուէ իւրոյ բարձրացուսցէ զբար եյ իւրոյ

‖2. Օրէ 32.35. Մտթ. 6. 14. Մարկ. 11.25. Հռոմ. 12.19.

յիշեա՛ զվերջինս

Vuuu  կու_

կութի իւր։ 13 *Ճակատումն փութանակի բորբոքէ զհուր․ և վէճ աճապարող հեղու զարիւն․ և լեզու վկայող յառաջբերէ զմահ։ 14 *Եթէ փչեսցես ի կայծակն՝ իբրև զհուր բորբոքեսցի․ և թէ թքցես ի վերայ նր՝ շիջանի․ եւ երկոքեանն են ի բերանոյ արտադային։ 15 *Վաճառին և երկլեզուին անէծք․ զի զբազումս վրդովեսցէ զխաղաղութիւն ունողս։ 16 *Եռալեզուն զյոլովս շարժեաց․ և ցրուեաց զնոսա յազգաց յազգս։ 17 *Զքաղաքս պարսպեալս քաժանեալ աւերեաց․ և զտունս մեծամեծաց ծակեաց։ 18 *Զզօրութիւն ժողովրդոց եհատ․ և զազգս հզօրս ելոյծ։ 19 *Եռալեզու զկանայս արամբիս՝ իբաց ձգէ․ և մերժեաց զնս ջանից իւրոց։ 20 *Որ հայի ի նա՝ ոչ ունիցի զհանգիստ․ և ոչ ունիցի զբարեկամ․ առ որ հանգիցի։ 21 *Գանիւք հարուած զկապուտակ առնէ․ իսկ հարուած լեզուի խորտակեսցէ զոսկերս։ 22 *Բազումք անկան սրով սուսերի․ այլ ոչ այնպէս իբրև որ միջամտեցաւ լեզուաւ իւրով։ 23 *Երանեալ է՝ որ ծածկեցաւ ի լեզուէ անիրաւէ․ որ ի ցասումն նորա ոչ էանց․ և որ ոչ արտաքարշեաց զլուծ նր․ և ի շղթայս նր ոչ է կապեալ։ 24 *Զի լուծ նր լուծ երկաթեղէն է․ և շղթայ նր շղթայ պղնձեղէն է։ 25 *Մահ նր մահ անիրաւագոյն․ և շահաւէտ յաւէտ դժոխք քան զնա։ 26 *Հեռեւումն նորա ոչ յարամնասցէ․ այլ ստորափակեսցէ զճանապարհս անիրաւաց․ և ներ բոցում իւրում ոչ կիզցէ զարդարսն։ 27 *Որք թողուն զՏր՝ անկցին ի նա․ և այրեսցէ ի նոցանէ՝ և ոչ շիջցի․ և առաքեսցի ի նոսա իբրև առիւծ․ և իբրև ինձ թօթափեսցէ զնս։ 28 *Ցանկեա զականջս քո փշօք․ լեզուի չարայուզի մի լսեր․ և բերանոյ քոյ արասցես ըղդուռն և փականս։ 29 *Զոսկի քո և զարծաթ քո ձուլեա․ և բանիւք քովք արասցես զսատեր․ և զսանձս բերանոյ քոյ ուղղիչս։ 30 *Եւ զգուշացիր․ մի գուցէ գայթագղեսցիս լեզուաւ․ և անկցիս առաջի երեսաց թշնամեաց դարանակալաց քոց․ և իցէ անկումն անբժշկելի մինչև ի մահ։

(լս. յարատև ուրէ նր)

(լս. և բանից քոյ արասցես ըղձիւ)

## ԳԼ․ ԻԹ․

Որ առնէ զողորմութի, փոխ տայ մերձաւորի իւրոյ․ և որ զօրանայ ձեռամբ՝ զպատուիրանս պահէ։ 2 *Փոխ տուր մերձաւորի քոյ ի ժամանակի կարօտութե նր․ և դարձեալ հատո մերձաւորին ի ժամանակի իւրում։ 3 *Հաստատեա զբան քո․ և հաւատարմաբար գործեա ընդ նմա․ և նամենում ամանակում գտցես որ ինչ քեզ հարկաւոր է։ 4 *Բազումք իբրև զգիւտ վարկան զփոխն․ և զօրացուցին զձանձրութի ի նոսա․ որք ինքեանց օգնեցին։ 5 *Մինչ առնուն՝ համբուրեն ըզձեռս տուողին․ և խոնարհեցուցանեն զձայնս իւրեանց։ 6 *Եւ ի ժամանակի դարձուցմանն՝ խնդրեսցէ զժամանակ․ և խօսեսցի զբանս ձանձրութե և տրտնջման․ և զժամանակ պատճառեսցէ։ 7 *Իսկ թէ կարիցէ վճարել՝ ընդդիմասցի․ հաստատոյն հազիւ անդրէն դարձուցանէ զկէսն․ և վարկանիցի զայն իբրև զգիւտ։ 8 *Իսկ եթէ դաւեսցէ ընդ նմա դրամով իւրով, ստասցի զնա թշնամի տարապարտուց։ 9 *Եւ արհամարհանս՝ և անէծս վերադարձեսցէ նմա․ և փոխանակ պատուոյ և բարերարութե հատուսցէ նմա նախատինս։ 10 *Բազումք ոչ անիրաւութե աղագաւ ոչ փոխատրեցին, այլ դաւել ի տարապարտուց երկեան։ 11 *Սակայն ի վերայ խոնարհի հոգւով հզօրագոյն լեր․ և վն ողորմութե մի քարշեսցես զնա։ 12 *Վասն պատուիրանին ընկալ զաղքատն․ և վն սորկութե նորա մի արձակեսցես զնա ունայն։ 13 *Կորո զարծաթն վասն եղբօր և բարեկամի քոյ․ և մի գաղեսցես զնա ընդ քարի ի կորուստ։ 14 *‖Դիր զգանձ քո ներ պատուիրանաց ‖ բարձրելոյն․ և շահաւէտ լիցի քեզ առաւել քան զոսկի։ 15 *‖Շարակեա ‖ զողորմութի քո ի սրտի աղքատի․ և նա սակս քո աղօթեսցէ առ ի փրկել յամենայն չարէ։ 16 *Դէր քան զվահան կարողի․ 17 և ի վեր քան զնիզակ, ընդդէմ 18 թշնամւոյ քոյ պատերազմեսցի։ 19 *Այր բարի զհաւատարմութի առնէ վասն մերձաւորի իւրոյ․ և որ կորուսցէ՝ զպատկառանս թողցէ ինքեան։ 20 *Զշնորհս երաշխաւորի մի մոռանար․ զի ետ փոխանակ քո զանձն իւր։ 21 *Զերաշխաւոր փախոյց մեղաւորն և 22 անմաքուրն։ *Զբարիս երաշխաւորի ինքեան գրեաց մեղաւորն․ և ապաշնորհս մտածմամբ ի բաց թողցէ զփրկողն իւր։ 23 *Այր երաշխաւորէ վասն բարեկամի իւրոյ՝ և իբրև կորուսցէ զճշմարտութի, ի բաց թողցի ի նմանէ։ 24 *Երաշխաւորութի անիրաւագոյն զբազումս կորոյս զուղիղս․ և շարժեաց զնս իբրև զալիս ծովու։ 25 *Զարս կարողս յածեաց ի տանէ ի տունն արար․ և տատանեալս ներ ազգաց 26 օտարաց։ *Մեղաւոր զանցեալ զպատուիրանաւն Տն, անկցի յերաշխաւո-

(Տբ. 4.10.) (Ղև. 17.18.)

խաւորութիւն դժամանս. և որ ջանայ զբազումս առնել, անկցի 'ի դատաստան:

27 *Մերձեցիր զմերձաւորն ըստ կարողութեան քո. և զգուշացիր քեզ. զի մի՛ անկցիս:

28 *Սկիզբն կենաց մարդոյ՝ ջուր և հաց՝ և զգեստ՝ և տուն պարտակող աղտեղութեան: (Սիր. 39. 31.)

29 *Լաւագոյն են կեանք աղքատի ընդ յարկաւ. քան զխորտիկս պայծառս 'ի պանդխտութեան՝ և Թարց բնակարանի:

30 *Փոքրագոյնն փոխանակ մեծի հաճոյ լիցի քեզ. և նախատինս պանդխտութեան մի՛ լուիցես:

31 *Կեանք վատթար օթագայելոյ 'ի տանէ 'ի տուն. և ուր օթագայեսցի, ոչ հաւատարմաբար գործեսցէ. և ոչ բանայցէ զբերան:

32 *Օթագայեսցի՝ և տածեսցէ՝ և արբուսցէ զապաշնորհս. առ այսոսիկ զդառնս լուիցէ:

33 *Անց պանդուխտ. և զարդարեա՛ զսեղան. և զոր 'ի ձեռին ունիս՝ կերակրեա՛ զայլս:

34 *Ել արտաքս եւ յերեսաց պատուոյ բարեկամաց իմոց. հարկաւորութիւն տան իմոյ պանդխտութիւն ինձ եղեալ եւ եղբայր:

35 *Ծանունք այսոքիկ մարդոյ ունողի զզգացումն: կշտամբութիւն տան՝ և նախատինք փոխատուի:

## ԳԼ: Լ:

1 Որ սիրէ զորդի իւր. յաճախէ 'ի մի նորա զգան. և խնդասցի 'ի վախճանի իւրոյ. և ոչ խարխափեսցէ զդրունս մերձաւորաց: (Առակ. 13. 24. և 23. 13)

2 *Որ ուսուցանէ զորդի իւր՝ գովեսցի նովաւ. և 'ի մէջ ընտանեաց նովաւ փառաւորեսցի:

3 *Որ ուսուցանէ զորդի՝ նախանձաբեկ առնէ զԹշնամիս իւր: և 'ի մէջ բարեկամաց փառաւորեսցի նովաւ: (Բ. Օրին. 6. 7.)

4 *Մեռաւ հայր նորա. և իբրու Թէ ոչ մեռաւ. զի զնման ինքեան եԹող զկնի ինքեան:

5 *Ի կեանս իւր ետես զնա. և խնդաց 'ի նա. յելս իւր ոչ է տրտում. և ոչ ամաչեաց առաջի Թշնամեաց:

6 *Զի եԹող զպաշտպան տան ներհակ Թշնամեաց. և բարեկամաց զհատուցանող զշնորհս:

7 *Փոխանակ անձանց որդւոց պատեսցէ զվէրս իւր. և 'ի վերայ ամենայն ձայնի դալարին աղիք նորա:

8 *Ձի անվարժ ընԹանայ խիստ. և որդի ընդարձակ ընԹանայ գահավէժ:

9 *Դիեցո՛ զորդի՝ և զանալից զքեզ արասցէ. խաղա՛ ընդ նմա. և տրտմեցուսցէ զքեզ:

10 *Մի՛ ծիծաղակցեսցիս ընդ նմա. զի մի՛ ցաւեսցիս. և 'ի վախճանի ընդարմասցին ատամունք քո:

11 *Մի՛ տացես նմա զկարողութիւն 'ի մանկութեան. և մի՛ անտես արասցես զխորհեցեալս նորա:

12 *Թեքեա՛ զպարանոց նորա 'ի մանկութեան. և հա՛ր զկողն մինչ մատաղ է: մի՛ (Սիր. 7. 25.)



դուցէ կարծրասցի. և ո՛չ հաւանեսցի քեզ. և եղիցի քեզ վիշտ անձին:

13 *Խրատեա՛ զորդի քո՝ և գործեա՛ 'ի նմա. զի մի՛ 'ի տգեղութեան նորա գայԹագղեսցիս:

14 *Լաւագոյն է աղքատ հզօր՝ և հզօր արանց. քան փարԹամ խօԹամին. և գանեալ չարակրութեամբ: (աղքատ առողջ և հզօր ուժգնութեամբ.)

15 *Ողջութիւն անձին սրբութեամբ արդարութեան, բարեգոյն է քան զամենայն ոսկի և զարծաԹ: և մարմին կարող քան զհասս անհամարս:

16 *Ոչ է հաս 'ի վեր քան զհաս ողջութեան մարմնոյ. և ոչ է զբօսան 'ի վեր քան զսրտի ուրախութիւն:

17 *Լաւագոյն է մահ՝ քան զկեանս դառինս: և հանգիստ մշտնջենական՝ քան զհիւանդութիւն յարակայական:

18 *Բարի Թաքուցեալ 'ի բերանոյ փակեցելում. իբրու առագրութիւնք խորտկաց շուրջեդեալք զգերեզմանաւ:

19 *Զինչ շահ լինիցի սպանդ կռոց. (Դանիէ. 13. 6.)

20 զի ոչ ուտէ՝ և ոչ հոտոտէ: *այնպէս որ 'ի բաց փախչիցի 'ի Տեառնէ. բարձեալ ըզ վարձս անիրաւութեան:

21 *Տեսեալ աչօք՝ և հառաչեալ. որպէս ներքինի զգիրկ արկեալ կուսի՝ և յոգւոց հանեալ:

22 *Տրտմութեան մի՛ տայցես անձին քո. և մի՛ խոշտանգանս քեզ ինքնին ներխորհրդեան քում: (Առակ. 12. 25:)

23 *Ուրախութիւն սրտի այս է կենդանութիւն մարդոյ. և գանձ անպակասելի սրբութեան. և ցնծութիւն (և 15. 13 և 17. 22)

24 առն է երկայնակեցութիւն: *Ողորմեա՛ց անձին քո հաճոյացեալ այ, և շարափակեա՛: հաւաքեա՛ զսիրտ քո 'ի սրբութեան նորա. և զտրտմութիւն 'ի բաց մերժեա 'ի քէն: (և լեր ժուժկալ)

25 *Զի զբազումս սպան տրտմութիւն. և ոչ է շահեկանութիւն 'ի նմա: (Բ. Կորն. 7. 10.)

26 *Նախանձ և սրտմտութիւն նուազեն զաւուրս. և յառաջ քան զժամանակն զծերութիւն առածէ խորհեցեալս:

27 *Պայծառացեալ սիրտ և բարի ներ խորտկաց է. զի խորտիկք նորա կամակարաբար լինին:

## ԳԼ: ԼԱ:

1 Տքնութիւն համեստութեան մաշէ զմարմինս՝ և խոկացումն ընմանէ 'ի բաց

2 բառնայ զքուն: *Խոկումն նախագիտութեան դարձուցանէ զզգացումն. և հիւանդութիւն ծանր զգաստացուցանէ

3 զհոգի: *Ջանացաւ մեծատունն 'ի հաւաքման դոյացութեան. և 'ի հանգստեան իւրում վերալցանիցի բարեօք

4 իւրովք: *Աշխատեցաւ աղքատն 'ի նուաստութեան ապրուստի. և 'ի վախ-

5 ճանի կարօտ լինի: *Որ սիրէ զոսկի ոչ արդարասցի. որ հետևի կատարա-

6 ծի՝ վերալցանի նովաւ: *Բազումք անկեալք են 'ի կորուստ ոսկւոյ. և (Սիր. 8. 3.)

եղեալ է 'ի խռովութեան իւրեանց կորուստ նց։ 7 *Փայտ գայթագղութեան է ոսկւոյ զոհողաց. վայ այնոցիկ որք զհետ երթան նմա. և ամ անմիտ կորնչիցի 'ի նմա։ 8 *Երանեալ է մեծատուն. որ գտեալ է անարատ. և որ զկնի ոսկւոյ ոչ գնաց. և ոչ յուսացաւ 'ի գանձ. 9 *Ո՞վ է այս՝ և գովեսցուք զնա. զի արար զսքանչելիս 'ի կեանս։ 10 *Ո՞ր ընտրեցաւ նովաւ. և կատարեալ է. եղիցին նմա պարծանք մշտնջենաւորք։ որ կարաց անցանել՝ և ոչ էանց. առնել զչար՝ և ոչ արար։ 11 *Առ որոյ կայունք են բարիք նր 'ի Տր. և զողորմութիւնս նր պատմեսցէ ամ եկեղեցի սրբոց։ 12 *'Ի վր սեղանոյ մեծի նստիր, մի՛ բացցես 'ի վր նր զկոկորդ քո նախնագոյն։ 13 *Մի՛ ասասցես այսպէս. բազումք են, որք 'ի վերայ նորա են։ 14 *Մտածեա՛ զի չար է ակն անօրէն։ 15 *Չարական ընդէր է ստեղծեալ. վասն որոյ յամէ ակնէ իւրմէ արտասուեսցէ՝ երբ տեսցէ։ 16 *Մի՛ ձգեր զձեռն քո նախկինագոյն. և մախանօք թշնամանեալ զամօթ կրեսցես։ 17 *Մի՛ նեղես զնա յերախանում։ 18 *Խորհեա՛ց, ոյք են մերձաւորք քո՝ 'ի քէն ինքնին։

19 *Ուտիր իբրև մարդ արդեամբք այսոքիւք, որք քեզ առ դնին. մի՛ երբ ուտիցես զյոլովս՝ ատեսցիս։ 20 *'Ի բաց արա նախնագոյն զպատճառ խրատուն. և մի՛ նուաստագոյն լինիր՝ մի՛ գուցէ գթեսցիս։ 21 *Եւ եթէ 'ի մէջ բազմաց նստեալ ես. նախագոյն քան զնս մի՛ ձգեր զձեռն քո. և մի՛ յառաջագոյն խնդրեր ըմպել։ 22 *Իբրու բաւական է մարդոյ խրատեցելոյ գինի սակաւ. և 'ի նինջելն մի՛ աշխատեսցիս 'ի նմանէ. և մի՛ զգասցես ցաւ։ 23 *Տքնութիւն՝ և ծամ՝ և մամուռ՝ առն ապշեցելոյ։ 24 *Նիրհումն առողջութեան 'ի մարդոյ խնայեմ։ Նրն ջեսցէ մինչև ցայգ. և անձն նորա ընդ իւրեան անդորրասցի։ 25 *Եւ եթէ բռնադատեսցիս յուտել զյոլով, արի՛ 'ի միջոյ. փախեա՛, և վերանորոգեսցէ զքեզ. և մի՛ վերաբերիցես մարմնոյ քոյ զտկարութիւն։ 26 *Լուր ինձ որդեակ. և մի՛ արհամարհեսցես զիս. և 'ի վախճանի գտցես զբանս իմ։ 27 *Յամենայնեան գործս քո լեր փոյթ. և ամ տկարութիւն մի՛ դիպեսցի քեզ։ 28 *Զպայծառութիւն ներ հացից բարեբանեսցեն շրթունք բազմաց. և վկայութիւն ճշմարտութեան նր հաւատարիմ։ 29 *Զվատթարագունէ հացի տրտնջեսցէ քաղաք. և վկայութիւն չարաբարոյութեան նորա ճշմարիտ է։ 30 *Զսիրելիս քո 'ի գինւոջ մի՛ բռնադատեր. զի զբազումս կորոյս գինի։

31 *Հուր փորձէ զերկաթ զկարծր. այսպէս գինի զսիրտս ամբարտաւանից ընդդիմացուցանէ արբեցութբ ըմպեալ։ 32 *Հաճելիք կեանք մարդկան, գինի զգաստութբ. թէ ըմպեսցես զնա հանդարտաբար՝ իցես զգաստ։ 33 *Ո՞յք կեանք են այնմիկ. որ սակաւանայ գինեաւ։ 34 *Զի՞նչ զրկէ զկեանս. մահ։ 35 *Գինի 'ի զուարթութիւն է ստեղծեալ՝ և ոչ յարբեցութիւն, 'ի բնէ։ 36 *Ցնծութիւն անձին և սրտի՝ գինի հանդարտաբար ըմպեալ։ 37 *Ողջութիւն անձին և մարմնոյ՝ զգաստ ըմպեալ։ 38 *Գինի յոլով արբեալ՝ զքամահանս, և զբարկութիւն և զամբոխմունս յոլովս առնէ։ 39 *Դառնութիւն անձին գինի յոլով ըմպեալ։ 40 *Արբեցութիւն ցասումն՝ անհանճարից գթեցումն. փոքրկացուցանող զօրութեան՝ և արարող վիրաց։ 41 'Ի խրախճանութեան գինւոյ մի՛ առարկեսցես ընդ մերձաւորին. և մի՛ անտես արասցես զնա 'ի զուարթութեան նր։ 42 *Զբանս նախատանաց մի՛ ասասցես նմա. և մի՛ սեղմեսցես զնա 'ի վերախուզման։

Սաղմ. 103.15. 31.4.

## Գլ. ԼԲ.

1 Առաջնորդ զքեզ կացուցին. մի՛ բարձրանար. լեր 'ի նոսա իբրև զմի 'ի նոցանէ։ 2 *Զկարիս նց հոգա. և այսպէս նիստ. և ամ հոգաբարձութբ քով բացատրեալ վերաբազմեա՛յ։ 3 *Զի ուրախասցիս վն նց. և զզարդ շնորհի առցես զպսակ. և արժանաւորութեան հեռևեսցիս մաղթողութեան։ 4 *Խօսեա՛ց մեծագեղ՝ զի վայել է իսկ քեզ։ 5 *Ճախորդ բան խնամակալի գիտութբ. և մի՛ խափանեսցես զերաժշտութիւն։ 6 *Ուր լուր ոչ է. մի՛ հեղցես զխօսս. և տարադէպօրէն մի՛ բարձրամտիր յիմաստութիւն քո։ 7 *Ակնիկ կայծական զարդ ոսկեան. և համեմատութիւն երաժշտաց 'ի բարեկենդանութեան գինւոյ։ 8 *Որպէս 'ի ճարտարապետութեան ոսկւոյ նշան է զմրխտոյ. այսպէս թիւ երաժշտաց 'ի զուարթութեան և հանդարտութեան գինւոյ։ 9 *Լուր լռեալ. և փոխանակ վերապատուութեան մերձեսցի քեզ բարի շնորհ։ 10 *Մանուկ՝ խօսեաց ներ պատճառաւ քում հազիւ։ 11 *Թէ երկիցս հարցցիս, ունիցի զգլուխ պատասխանի քո։ 12 *Ներ բազմաց լեր իբրու անգէտ. և լուր լռեալ՝ համայն և յուզող։ 13 *'Ի մէջ մեծամեծաց մի՛ նախառնցես. և ուր են երէցք՝ մի՛ բազում խօսեսցիս։ 14 *Նախ քան զկարկուտ յառաջդնայ փայլատակումն. և յառաջ քան զամօթ յառաջանայ շնորհ։

13.2.

շնորհ †: *Եւ ՚ի ժամու յառնելոյ մի զքեզ ունայնացուցես. բայց նախքան թաց լեր նախկնագոյն ՚ի տուն քո. և անդ այլաձայնեաց. և անդ խաղա՛: 16 *Եւ արա՛ զշարակապումն քո. և մի ՚ի յանցանս՝ և բանիւ ամբարտաւանի: 17 *Եւ ՚ի վ(երայ) այսոցիկ ամենայն օրհնեսցես զՏր՝ որ արար զքեզ. և զարբեցեալ զքեզ յամենայն բարեաց իւրոց: 18 *Որ երկնչի ՚ի Տէ ընդունիցի զուսումն նր. և որք ընդունիցին առ նա՝ գտցեն զորհնութիւն: 19 *Որ խնդրէ զօրէնս, լնանիցի յայնմանէ. և որ նենգաւորաբար առնէ՝ գայթագղեսցի ՚ի նմա: 20 *Որք երկնչին ՚ի Տէ՝ գտցեն զդատաստան արդար. և զարդարութիւնս իբրև զլոյս լուցցեն: 21 *Մեղաւոր մարդ փախչի յուղղութենէ. և ըստ կամաց իւրոց գտանիցէ զհամեմատութիւն: 22 *Այր խորհրդոյ ոչ ցրուեսցէ զիմացականութիւն. օտարական և հպարտ ոչ տագնապի երկիւղիւ: 23 *Եւ ես զկնի որոյ արար ընդ նմա առանց խորհրդոյ՝ և իւրովք շարժմամբք յանդիմանի: 24 *Որդեակ, թարց խորհրդոյ մի ինչ արասցես. և զկնի արարմանն ոչ զղջասցիս: 25 *Ի ճանապարհ բեկման մի երթայցես՝ և մի գթեսցիս առ վէմս. և մի հաւատասցես զքեզ ճանապարհի բազմաշխատի: մի դիցես անձին քոյ զգայթագղութիւն: 26 *Եւ յորդւոց քոց զգուշասջիր. և յընտանեաց քոց զգոյշ լեր: 27 *Յամենայն գործում քում հաւատա՛ ՚ի հաւատոյ անձին քոյ. զի այս է պահպանութիւն պատուիրանաց: 28 *Որ հաւատայ Այ՝ զգուշանայ պատուիրանին. և որ յուսայ ՚ի նա՝ ոչ փոքրկասցի:

## ԳԼ. ԼԳ.

1 Երկիւղածի Տն ոչ պատահեսցին չարիք. այլ ՚ի փորձութեան Տր զնա պահպանեսցէ. և փրկեսցէ ՚ի չարեաց: 2 *Իմաստունն ոչ ատէ զպատուիրանս և զարդարութիւնս. և ոչ փշրեսցի իբրև ՚ի մրրկի նաւ: 3 *Մարդ զգօն հաւատայ օրինին Այ: և օրէնքն նր հաւատարիմ: 4 *Որ զհարցումն բացատրէ՝ պատրաստէ զբան. և այնպէս աղաչեալ լսելի լիցի: և շարապահեսցէ զմակացութիւն, և յայնժամ պատասխանեսցէ: 5 *‖Գութ մորոսի իբրև անիւ սայլի. և իբրև զսռնն շրջաբերելի խորհուրդ նր: 6 *Ձի սանձարձակ՝ այնպէս և բարեկամ կատակօղ, ընդ ամի հեծնողի խինջայ: 7 *Ընդէ՞ր օր զաւուրբ վերանայ. և վերստին՝ լոյս զլուսով. և ամ զամի յարեգականէն: 8 *Ի գիտութեն Տն որոշեալք են. և յարարածոց արեգական. և զպատուէրանս պահողէ: 9 *Եւ փոփոխեաց զժամանակս. և զաւուրս տօնից իւրեանց. և ՚ի նոսա աւուրս տօնից տօնեցին առ ժամն: 10 *Յայսցանէ վերացոյց՝ և մեծացոյց Տծ. և յայսցանէ ՚ի թիւ աւուրց: և ամենայն մարդիկք ՚ի միայնոյ՝‖ և յերկրէ. 11 ուստի ստեղծաւ ադամ: *Ի բազմութեան մակացութեան Տէր որոշեաց զնոսա. և փոփոխեաց զճանապարհս 12 նոցա: *Յայսցանէ օրհնեաց՝ և բարձրացոյց. և յայսցանէ սրբեաց. և առ ինքն շարաբերեաց: և յայսցանէ անէծ՝ և խոնարհեցոյց. և դարձոյց զնոսա յորոշմանէ իւրեանց: 13 *‖Իբրև զկաւ բրտի ՚ի ձեռին իւրեան. 14 կազմել զնա՝ և յօրինել: *Ամենայն ճանապարհք նր ըստ դիտաւորութեան իւրոյ. այսպէս մարդ ՚ի ձեռին նորա. որ զինքն արար. և հատուսցէ նմա ըստ 15 դատաստանի իւրոյ: *Ներհակ չարի բարին է. և ներհակ մահու կեանք. այսպէս և ներհակ առն արդարոյ մեղաւորն. և այսպէս նկատեա՛ զամենայն զգործս բարձրելոյն: երկու և երկու՝ և մի հակառակ 16 միոյ: *Եւ ես յետնորդ տքնեցայ. և իբրև զճռաքաղս զկնի կթո_ 17 ղաց: *Յօրհնութիւն Տն և ես ինքնին յուսացայ. և իբրև որ կթիցէ՝ վերա_ 18 լցի զհնձան: *‖Հայեցարո՛ւք. զի ոչ ինձ միայնոյ վաստակեցի. այլ ամենե_ 19 ցուն խնդրողաց զմակացութիւն: *Լուարուք ինձ մեծամեծք. և ամենայն ժողովուրդք. և կառավարօղք եկեղեցւոյ 20 ականջօք ընկալարո՛ւք: *Որդւոյ և կնոջ, եղբօր՝ և բարեկամի † մի տար այլոյ զստացուածս քո. մի գուցէ սորճացուսցէ զքեզ՝ և աղաչեսցես վն նց: 21 *Մինչդեռ վերոյ ես՝ և շնչես. ոչ փո_ 22 փոխեսցէ զքեզ ամմնեղի: *Զի լաւ գոյն է քեզ՝ զի որդիք քո զքեզ աղաչեսցեն. քան դու հայեսցիս ՚ի ձեռս 23 որդւոց քոց: *Յամենայն գործս քո լեր 24 յառաջացեալ: *Մի՛ տացես զբիծ ՚ի փառս քո. յաւուր կատարածի աւուրց կենաց քոց՝ և ՚ի ժամանակի ելից քոց բաժանեա՛ զժառանգութիւն քո: 25 *Խոտ՝ և բիր՝ և բեռն իշոյ. հաց՝ և 26 գան՝ և գործ ծառայի: *Գործէ գանիւ, և խնդրէ հանգչիլ. հանգուցեալ ձեռն նորա՝ խնդրէ զազատութիւն: 27 *Լուծ և փոկ կարկամեցուցանեն ըզպարանոց խիստ. և զծառայ խոնարհեցուցանեն գործաւորութիւնք հանապազ 28 որդք: *Ծառայի չարաբարոյի տանջանք՝ և ոտնակապ. արկ զնա ՚ի գործաւորութիւն. զի մի պարապեսցի:

*Զի

‖ Ծննդ. 2. 7. ‖ Հռոմ. 9. 21. ‖ Մտ. 24. 47. ‖ Եր. 21. 17.

29 * Ոչ զբազում չարութիւն ուսոյց դատարկութիւն։ 30 * Ի գործոյ կացո զնա. զի այնպէս վայելէ նմա։ Իսկ եթէ ոչ հնազանդաբար լուէ՝ կորուսցո զնա ոտնակապօք. և մի՛ առաւելացուցես առաւել քան զչափ մնեղի։ բայց թարց իրաւանց մի՛ ինչ արասցես ծանրապէս։

31 *‖ Իսկ թէ գոյ քեզ ծառայ հաւատարիմ, լիցի քեզ իբրև զանձն քո. իբրև զեղբայր այնպէս զնա բացերևեցո. քանզի արեամբ անձին համեմատեցեր զնա։ 32 * Ոչ թէ զայրացուցես զնա անիրաւաբար. 'ի փախուստ դարձցի։ 33 * Իսկ եթէ ընդոստուցեալ գնաց՝ զո՞վ յուզեսցես. և որով ճանապարհաւ խնդրեսցես զնա՝ ոչ գիտես։

‖ Սիր. 7. 23.

## ԳԼ: ԼԴ:

1 Ընդունայն յոյս. և ստութիւն առն անմտի. և երազք ընդոստուցանեն զանհմուտս։ 2 * Որպէս որ ըմբռնէ զստուեր. և հալածէ զհողմ. այնպէս և որ միտ դնէ տեսլեանց ստոյ. 3 * Այս, ըստ այսմ տեսիլ երազոց. առաջի երեսաց մարդոյ՝ նմանութիւն մարդոյ։ 4 * Յանմաքրոյ զի՞նչ մաքրեսցի. և 'ի ստոյ զի՞նչ ճշմարիտ ասասցի։ 5 * Գիւթութիւն մոլորութեան. և հմայութիւն սուտ. և երազ կախարդաց ընդունայնութիւն է։ 6 * Իսկ իբրև երկնողի, սիրտ քո զցնորմունս երկնէ. եթէ ոչ 'ի բարձրելոյն եղիցի առաքեալ տեսիլ. մի՛ տացես 'ի նոսա զսիրտ քո։ 7 * Ոչ զյոլովս մոլորեցոյց երազ՝ և վրիպեցան յուսացողք 'ի նոսա։

8 * Առանց ստութեան վճարեսցի բան օրինաց. և իմաստութիւն 'ի բերանոյ հաւատարմի հարթեսցի։ 9 * Որ ոչ է զփորձ առեալ՝ զի՞նչ գիտէ. այր որ բազմաց զչափ առեալ, խոկասցի զբազումս. և որ զյոլովս ուսանի, ճառեսցէ զիմացուածս։ 10 * Որ ոչ է զչափ առեալ, զսակաւ վերաճանաչէ։ Իսկ որ 'ի բազումս եղեալ է՝ բազմապատկեսցէ զչարուն։ 11 * Որ զփորձ առեալ ոչ է, զո՞րպիսիս գիտէ. որ վրիպեալ է՝ առատացուսցէ զանիրաւութիւն։ 12 * Ի բազումս տեսի պատրեալս. և զստորոտութիւնս յոլովս բանից։ 13 * Այլ երբեմն մինչև 'ի մահ ճգնեալ եմ այսոցիկ աղագաւ. և ազատեցեալ եմ շնորհիւ Տն։ 14 * Հոգի երկիւղածաց Տն խնդրի. և 'ի հայեցուածս նր օրհնեսցի։ 15 * Ոչ յոյս նց 'ի կեցուցանողն զնս. և աչք Տն 'ի սիրողս իւր։ 16 * Որ երկնչի 'ի Տէ, ոչինչ տագնապեսցի. և ոչ պակնուցու՝ զի նա է յոյս նր։ 17 * Երկիւղածի Տն երանեալ է անձն։ 18 * Առ ո՞ր ակնարկէ. և ո՞վ է զօրութիւն նր։

որ ոչ է փորձեցեալ

19 *‖ Աչք Տն 'ի վր երկիւղածաց իւրոց՝ հովանի կարողութեն. հաստատութիւն զօրութեն. գլխարկ տապոյ՝ և հովանոցիկ միջօրէի։ 20 * Աղերսանք գթեցելոց. և օգնական անկելոց. բարձրացուցանող անձին. և լուսաւորող աչաց. տուօղ առողջութեն և կենաց, և օրհնութեն։ 21 *‖ Ոչ հօղի յանիրաւութե մատուցումն է բծաւորեալ. և ոչ են բարեհաճոյք արհամարհութիք անիրաւաց։ 22 * Տր միայն ակն ունողաց իւրոց ճանապարհաւ ճշմարտութե և արդարութե։ 23 *‖ Ոտուրս անիրաւաց ո՛չ ընտրէ բարձրեալն. և ո՛չ հայի 'ի մատուցմունս անիրաւաց. և ո՛չ 'ի բազմութե ողջակիզաց նր քաւեսցէ ըզ մեղս նր։ 24 * Որ մատուցանէ զողջակէզ 'ի գոյացութէ աղքատաց՝ իբրու թէ որ զենու զորդի առաջի աչաց հօր իւրոյ։ 25 * Հաց կարօտելոց կեանք աղքատաց է. որ զրկէ զնա՝ այր արեան է։ 26 * Որ 'ի բաց բառնայ 'ի քրտան զհաց. իբրու թէ որ սպանանէ զմերձաւոր իւր։ 27 * Որ հեղու զարիւն. ‖ և որ զրկանս առնէ վարձկանի, եղբարք են։ 28 * Մին շինող՝ և մին աւերող. զի՞նչ շահ է նց եթէ ոչ վաստակ։ 29 * Մին օրհնող՝ և մին անիծանող. որո՞յ զձայն լուիցէ Տծ։ 30 * Որ մկրտի 'ի մեռելոյ՝ և վերստին շօշափէ զնա. զի՞նչ օգուտ է լուացումն նր։ 31 *‖ Այնպէս մարդ որ 'ի բաց կացցէ 'ի մեղաց իւրոց. և վերստին զնոյն առնէ. զի՞նչ օգուտ առնէ խոնարհեցուցանելովն զինքն. զաղօթս նր ո՞վ ոք լուիցէ։

‖ Սաղմ. 33. 16.
‖ Առակ. 21. 27.
‖ Առակ. 15. 8.
‖ 2. Օր. 24. 14.
‖ Սիր. 7. 22.
Թւ. 19.
‖ 2. Պետ. 2. 21.

## ԳԼ: ԼԵ:

1 Որ պահէ զօրէնս. բազմապատկէ զմատուցմունս։ 2 *‖ Ողջակէզ փրկութե է զգուշանալ պատուիրանաց, 3 և զիջանել յամէ անիրաւութէ։ * Իսկ զքաւութիւն մատուցանել ողջակիզի 'ի վր անիրաւութեց. և մաղթանս վս մեղաց յետս դառնալ յանիրաւութէ։ 4 * Վերահատուսցէ զշնորհ՝ որ մատուցանէ զնաշիհ. և որ առնէ զողորմութի, 5 մատուցանէ զողջակէզ։ * Բարեհաճութի է Տն դառնալ յանիրաւութէ. և մաղթանս վասն մեղաց՝ դառնալ յանուղղայութէ։ 6 *‖ Մի՛ երևեսցիս առաջի երեսաց Տն 7 դատարկ։ * Ոչ այսոքիկ ամէն վասն 8 պատուիրանի այ լինին։ * Մատուցումն արդարոյ պարարէ զսեղան. և հոտ անուշութե է առաջի բարձրելոյն։ 9 * Ողջակէզ արդարոյ ընկալեալ է. և 10 զյիշատակ նր ո՛չ մոռասցի Տր։ * Բարեաւ հոգւով զփառս հատո այ. և մի՛ գծու-

‖ [illegible] 7. 3.
‖ Ելից 23. 15.
34. 22
2. Օր. 16. 16.

զծուծ առնէր զերախայրիս ձեռաց քոց: 11 *Յամենայն տուրս քո զուարթացո զերեսս քո. և ցնծութեամբ սրբեա զտասանորդս քո: 12 *Տուր բարձրելոյն ըստ տրոց նորա: և բարեաւ ակամբ առ 'ի գիւտ արարեցելոյ ձեռին քոյ: 13 *քանզի Տր հատուցանօղ է. եօթնիցս և եւթ հատուսցէ քեզ: 14 *Մի՛ մատուցաներ զնուէրս թիւրս. զի ոչ ընկալցի զնա: 15 *Եւ մի՛ ակնարկեր յողջակէզ անիրաւ՝ քանզի Տէր դատաւոր է. և ոչ է առ նա ակնառութիւն փառաց: 16 *Ոչ առնուցու Տր ակն երեսաց յաղքատս. և զաղաչանս տառապելոց լուիցէ: 17 *Ոչ անտես առնէ զաղաչանս որբոյ. և ոչ այրւոյն. թէ հեղցէ զխօսիկս հեծութեան: 18 *Ոչ արտասուք այրւոյն առ ծնօտն իջանեն. և աղաղակ նր 'ի վերայ վայր իջուցանողին նր: 19 *Օր 'ի ծնօտէն ելանեն մինչև յերկինս. և Տէր ունկնդիր ոչ խնդայ 'ի նոսա: 20 *Որ երկրպագէ Այ բերկրութեամբ՝ ընդունելի լիցի. և խնդրուածն մինչև յամպս մերձեսցի: 21 *Աղօթք խոնարհեցուցանողի զինքն՝ զամպս խուզէ. և մինչև մերձեսցի՝ ոչ մխիթարեսցի. և ոչ իջցէ՝ մինչև բարձրելոյն հայեսցի: 22 *Եւ Տր ոչ 'ի բաց կացցէ, այլ դատեսցէ զարդարս. և արասցէ զիրաւունս. և հզօրագոյնն ոչ կալցի 'ի նոսա զերկայնմտութիւն. զի խորտակեսցէ զթիկունս նր: 23 *Եւ ազգաց հատուսցէ զվրէժխնդրութի. մինչև բարձցէ զլրութի ամբարտաւանից. և զգաւազան մեղաւորաց խորտակեսցէ: 24 *Մինչև հատուսցէ մարդկան ըստ արարից իւրոց: և ըստ գործոց ադամայ. և ըստ վաղվաղման նորա: 25 *Մինչև դատեսցէ զդատաստանս ժողովրդեան իւրոյ. և զուարճացուսցէ զարդարս ողորմութի իւր: 26 *Գեղեցկագոյն է ողորմութիւն Այ 'ի ժամանակի նեղութեան. իբրև ամպք անձրևոյ 'ի ժամանակի երաշտութեան:

## Գլ: ԼԶ:

1 Ողորմեա՛ց մեզ Ած ամենեցուն. և հայեա՛ց 'ի մեզ. և ցո՛յց մեզ զլոյս գթութեանց քոց: 2 *Եւ ա՛րկ զերկիւղ քո 'ի վերայ հեթանոսաց՝ ոյք ո՛չ խնդրեցին զքեզ. զի ծանիցեն՝ զի ոչ է Ած. եթէ ոչ դու. և պատմեսցեն զմեծամեծս քո: 3 *Համբարձ զձեռն քո 'ի վր ազգաց օտարաց. զի տեսցեն զզօրութիւն քո: 4 *Որպէս առաջի աչաց նոցա սրբագործեալ ես 'ի մեզ. այսպէս առաջի աչաց մերոց մեծասցիս 'ի նոսա: 5 *զի ճանաչիցեն զքեզ. որպէս և մեք ճանաչեցաք՝ քանզի ոչ գոյ Ած բաց 'ի քէն Տր: 6 *Նորոգ նշանաւ և անփոփոխ լեաւ սքանչելեաւ: 7 *Փառաւորեա՛ զձեռն և զբազուկ զաջ: 8 *Սաղվաղեա զսրտմտութի և հեղ զբարկութի: 9 *Բարձ զհակառակորդն՝ և տանջեա զթշնամին: 10 *Փութացո զժամանակն՝ և յիշեա զվաղճան. զի ճառեսցեն զսքանչելիս քո: 11 *Բարկութեամբ բոցոյ լափեսցի՝ որ կեցցէ. և ոյք չարչարեն զժողովուրդ քո՝ գտցեն զկորուստ: 12 *Ճախճախեա զգլուխ իշխանաց թշնամեաց ասողաց՝ ոչ է այլոք բաց 'ի մէնջ: 13 *Ժողովեա զամենեսեան ցեղս յակոբու. զի ծանիցեն՝ քանզի ոչ գոյ՝ եթէ ոչ դու: և ճառեսցեն զմեծամեծս քո. և ժառանգիցես զնս: որպէս 'ի սկզբանէ: 14 *Ողորմեա՛ց ժողովրդեան քոյ. 'ի վր որոյ կոչեցեալ է անուն քո: և իէլի. զոր նմանակցեցեր անդրանկի քոյ: 15 *Ողորմեա՛ց քաղաքի սրբագործեցելոյ քոյ Եէմի. քաղաքի հանգստեան քոյ: 16 *Լցո զսիոն անճառելեօք բանիւք քովք. և փառօք քովք զժողովուրդ քո: 17 *Տո՛ւր զվկայութիւն սոցա. որք 'ի սկզբանէ ստեղծուածք քո են: և ընկա՛լ զհրատարակութիւնս. զորս խօսեցան յանուն քո մարգարէքն նախկինք: 18 *Տո՛ւր զվարձ ակնունողաց քեզ. զի մարգարէքն քոյ հաւատարիմք գտանիցին: 19 *ըստ օրհնութեան ահարոնի սակս ժողովրդեան քոյ. և ուղղեա զմեզ 'ի ճանապարհս արդարութեան. և գիտասցեն ամենեքեան. որք բնակեալք են յերկրի. զի դու ես Ած մշտահայեաց յաւիտենից: 20 *Ամ զկերակուր կերիցէ որովայն. և է կերակուր կերակրոյ լաւագոյն: 21 *Քիմք ճաշակեն զկերակուր երէոյ. և սիրտ զգացուածս բանից ստոց: 22 *Սիրտ թիւրեալ տայ զտրտմութի. և մարդ հմուտ վերականգնեսցէ զնա: 23 *Ամ զարու 'ի բաց թողու կին. և է դուստր լաւագոյն դստերք: 24 *Գեղեցիկ կնոջ զուարճացուցանէ զերեսս առն իւրոյ. և 'ի վեր քան զամ զցանկութի մարդոյ վերաբերեն բաղձանք: 25 *Եթէ է լեզու հեզաբարձութեան † ողորմութեան. ոչ է այրն նր ըստ որդւոց մարդկան: 26 *Որ ստանայ զկին բարի, ձեռն արկանէ 'ի ստացուածս՝ օգնականութի ըստ այնմ է. և սիւն, զի հանգիցէ: 27 *Ուր ո՛չ է ցանգ, յափշտակեսցի ստացուած. և ուր ոչ է կին՝ յոգւոց հանէ կարօտն: 28 *Ո՛վ հաւատայ նմա՝ որ ոչ ունի զբոյն. և լալով իւրաքանչիւրեք նաեմասցի: իբրև զն տամէջ աւազակ վազելով 'ի քաղաքէ 'ի քաղաք:

Գլ:

## ԳԼ: ԼԷ:

Ամենայն բարեկամ ասէ՝ և ես զբարեկամութիւն շաղկապեցի։ բայց է բարեկամ միայն անուամբ բարեկամ։ 1
ոչ ապաքէն տրտմութիւն ներդոյ մինչև 'ի մահ։ *Իսկ համշիրակ և բարեկամ առ 'ի թշնամութիւն շարադառնան։ 2
*Ով վաղվաղկոտութիւն վատթարագոյն. ուստի՞ ես ստեղծեալ՝ ծածկել զերկիր թայեալն չարութեամբ և նենգութեամբ նորա։ 3
*Համշիրակ բարեկամ համեղանայ զուարճութեամբք, և 'ի ժամանակի նեղութեան ներհակ լինի։ 4
*Համշիրակ բարեկամ ցաւակցի որովայնի աղագաւ. և ներհակ թշնամւոյ առցէ զսաղաւարտ։ 5
*Մի՛ մոռանայցես զբարեկամ քո 'ի մտաց քոց. և մի՛ անյիշելի եղիցիս նմա ներ փարթամութեանց քոց։ 6
*Մի՛ խորհրդակցիր ընդ նմա՝ որ քեզ դարանակալ է. և 'ի նախանձողաց ընդ քեզ թաքո՛ զխորհուրդդ։ 7
*Ամ խորհրդածու 'ի բաց ընկենու զխորհուրդ. այլ է խորհրդածուն ինքն յինքեան։ 8
*Ի խորհրդականէ պահեա՛ զանձն քո. նախ գիտասջիր. որ է նորա հարկաւորութիւն. զի և ինքն անձին իւրոյ խորհեսցի։ 9
*Մի՛ գուցէ արկցէ զմահակ յերկիր՝ և ասասցէ քեզ։ 10
*Բարի է ճանապարհ քո. և կացցէ 'ի հեռաստանէ տեսանել զինչ քեզ առեկեսցէ։ 11
*Ընդ առն անկրօնի ճառեա՛ սակս սրբութեան. և ընդ անիրաւի յաղագս արդարութեան. ընդ կնոջ սակս այնորիկ որ նախանձի. ընդ երկչոտի սակս պատերազմի. ընդ վաճառականի յաղագս թարգմանութեան։ ընդ ստացողի սակս վաճառելոյ. ընդ առն գանակոծի յաղագս շնորհակալութեան։ 12
*Ընդ ամբարշտի յաղագս գթածութեան. ընդ անարգի սակս արդարութեան. ընդ մշակի անդաստանականի յաղագս ամի գործոյ։ 13
*Ընդ գործունեի տարեւորի յաղագս կատարման տարւոյն։ ընդ ծառայի պղերգի սակս յոլովի գործոյ. մի՛ յուշ արասցես այսոքիւք յամի խորհրդեան։ 14
*Այլ ընդ առն սրբոյ հանապազորդ լեր. զոր միանգամ ճանաչեսցես զնա պահպանող երկիւղին Տեառն։ 15
*Որոյ միտք են ըստ մտաց քոց. և որ, երբ գողդոջեսցես 'ի խաւարի՝ ցաւակցեսցի քեզ։ 16
*Զսիրտ բարւոյ խորհրդոյ կայացո՛ ընդ քեզ. զի ոչ է քեզ այլ ինչ յոլովագոյն քան զայն։ 17
*Անձն առն սրբոյ պատմէ երբեմն զճշմարիտ, քան զեօթն շրջադիտակս նստեալս 'ի բարձու առ 'ի դիտել։ 18
*Եւ ընդ սոսա ամենեցուն աղաչեա՛ զբարձրեալն. զի ուղղեսցէ 'ի ճշմարտութեան զճանապարհս քո։ 19

հաւանէ զխորհուրդ

յաղագս անդորրութեան խաղաղութեան

20 *Յառաջ քան զամ գործս՝ բան ճշմարիտ առաջնորդեսցէ քեզ. և նախ քան զամ զարար՝ խորհուրդ կայուն։
21 *Նշան վատթար փոխեսցէ զսիրտ. յորմէ մասունք չորք շառաւիղին. բարի և չար. կեանք և մահ։ և տիրուհի նոցա է հանապազորդ լեզու։ է այր խորագէտ բազմաց խրատող. և անձին իւրոյ անօգուտ է։
22 *Այր հմուտ զբազումս խրատեաց. և անձին իւրոյ համեղ է։
23 *Որ իմաստակաբար խօսի՝ ատելի է. նամենում իրում զլանայցէ։
24 *Ոչ է նմա տուեալ 'ի Տեառնէ շնորհ. զի ամենայնիւ իմաստութեամբ զլացեալ է։
25 *Է իմաստուն՝ անձին իւրոյ իմաստուն. և պտուղ զգօնութեան նորա գովելի։
26 *Այր իմաստուն զժողովուրդ իւր խրատէ. և պտուղք զգօնութեան նորա հաւատարիմք են։
27 *Այր իմաստուն լնանիցի օրհնութեամբք. և տեսանողք ըզնա գովեսցեն։
28 *Կեանք առն ներ թուոջ աւուրց. իսկ աւուրք Իղի անթիւք են։
29 *Իմաստուն ներ ժողովրդեան ժառանգեսցէ զպատիւ. և անուն նորին եղիցի կենդանի 'ի մշտնջենաւորս։
30 *Որդեակ ներ կենաց քոց փորձեա՛ զանձն քո. և թէ եղիցի վատթար, մի՛ տացես նմա զիշխանութիւն։
31 *Զի ոչ ամենեքեան ամենեքումբք օգտին. և ոչ ամի անձին ամ սեռ հաճոյ լինի։
32 *Մի՛ ունկնդիր լինիր նամենում խրախութեան. և մի՛ զքեզ հեղցես 'ի վ ամի կերակրոյ։
33 *Քանզի 'ի բազմաց կերակրոց եղիցի տկարութիւն. և լոռղութիւն մերձենայցէ մինչև 'ի զեղխումն։
34 *Սակս արբշռութեան յոլովք կորեան. իսկ որ 'ի բացկացեալ է՝ առյաւելցէ զկեանս։

## ԳԼ: ԼԸ:

1 Պատուեա՛ զբժիշկ վասն հարկաւորութեան. քանզի և զնա ստեղծ բարձրեալն։
2 *Զի յԱյ է ամ բժշկականութիւն. և 'ի թագաւորէ առցէ զպարգևս։
3 *Մակացութիւն բժշկի բարձրացուսցէ զգլուխ նորա. և առաջի մեծամեծաց գովիցի։
4 *Բարձրեալն ստեղծ յերկրէ զբժշկականութիւնս. և այր խորագէտ ոչ 'ի բաց խոտեսցէ զնոսա։
5 *‖Ո՛չ ապաքէն 'ի փայտէ քաղցրացեալ է ջուր դառն։ ‖ Ելից 15. 25.
6 *Առ 'ի ծանօթութիւն մարդկան զօրութիւն նոյա. և ետ մարդկան զգիտութիւն բարձրեալն. պատուիլ ներ սքանչելեաց իւրոց։
7 *Սոքօք բժշկօղն դիւրացուսցէ զցաւս. և իւղեփեցն արասցէ սնդոյրս համեղութեան. և օծանելիս շարակատարեսցէ ողջութեան

թն։ և ո՛չ աւարտին գործք նր։ * Զի խաղաղութիւն Տ՟ն 'ի վերայ երեսաց երկրի։ * Որդեակ 'ի քում հաստատութեան մի՛ անտես արասցես զուղղ զքեզ ինքնին. այլ աղաչեա՛ զՏր. և ինքն ողջացուսցէ զքեզ։ * Դարձի՛ր 'ի յանցանաց. և ուղղեա՛ զձեռս քո. և յամենից յանցանաց սրբեա՛ զսիրտ քո։ * Տո՛ւր զհամեղութի և զյիշատակ նաշհոյ. և պարարեա՛ զմատուցմունս. և տո՛ւր զտեղի բժշկի։ * Զի և զնա Տր ստեղծ. և ոչ զատցի 'ի քէն. զի գործք նր են հարկաւորք։ * Զի է ժամանակ յորժամ 'ի ձեռս նոցա դիմեսցես։

* Նոքա իսկ զՏր աղաչեսցեն. զի ուղղեսցէ զհանգիստ նց. և զբժշկութի վասն շրջագայութե նց։ * Որ յանցանէ առաջի նորա՝ որ արար զնա. անկանի 'ի ձեռս բժշկի։ * Որդի՝ 'ի մեռեալն իջո՛ զարտասուս՝ և իբրու զդառնութի կրեալ ձեռնարկեա՛ լալ. և ըստ իրաւանցն հալի՛ր 'ի մարմին նր։ և մի՛ անտես արասցես զգամբարան նր։ * Վասն քսութե իսկ դառնապէս բե՛ր զսուգ նորա օր մի. և մխիթարեա՛ց սակս տրտմութենն։ * և արա՛ զսուգ նր ըստ արժանւոյն նորա մի օր. կամ երկուս վասն բամբասանաց։ * Զի 'ի տրտմութէ վաղվաղէ մահ. և տրտմութի սրտի կարկամեցուցանէ զպարանոց։

* 'Ի դանդաշմանէ յարամնայ տրտմութի. և գոյացուի անընչին իբրև զսիրտ նր։ * Մի՛ տացես տրտմութե զսիրտ քո. այլ 'ի բաց մերժեա զնա 'ի քէն. և յիշեա՛ զյետնագոյնսն։ * Մի՛ մոռանար, զի ոչ ևս է անդրադարձութի։ և սմին ոչ ինչ օգուտ լիցիս. և զքեզ ինքնին չարագոյնս արասցես։ * Յիշեա՛ զիրաւունս իմ. զի այնպէս եղիցի և քոյն։ ինձ երէկ՝ և քեզ այսօր։

* 'Ի հանգստեան մեռելոյ հանգո՛ զյիշատակ նորա. և մխիթարեա՛ զնա յելս հոգւոյ իւրոյ։ * Իմաստութի դպրի 'ի ժամանակի դատարկութեան։ և որ փոքրկանայ իրակութբ՝ զիմաստութբ ձեռն արկցէ. քանզի իմաստութբ վերանանիցի։ * Որ ըմբռնէ զմաճ. և որ պարծի վարչաւ. խթանաւ զեզինս ձեպեսցէ. և պահի 'ի գործս նոցա. և ճառ նր յորդիս ցլուց։ * Զսիրտ իւր տացէ յանդրադարձութիս ակօսաց. և հսկումն նր 'ի պարարումն երինջոց։

* Այնպէս ամ հիւսն և ճարտարապետ. որ զգիշերն իբրև զտիւ կատարէ՝ որ քանդակէ նմանութիս քանդակելեաց։ և համապատրդութի նորա զմանանէ զնկարակերտութի։ զսիրտ իւր տացէ 'ի նմանութի նկարակերտութեն։ և հսկումն իւր բացակատարէ զգործ.

* Այնպէս հիւսն երկաթոյ նստեալ հանդէպ սալին. և նշմարէ զգործս երկաթոյ։ Մրրիկ հրոյ խանձէ զմարմին նորա. և ջերմութե քրային ընդդիմանայ։ * Ձայն ուռան խլացուցանէ զականջ նր. և հանդէպ նմանութե անօթոյ աչք նորա։ * Զսիրտ իւր տացէ 'ի կատարումն գործոյ. և հսկումն իւր զարդարեսցէ 'ի կատարումն։

* Այնպէս բրուտ նստեալ 'ի գործ իւր. շրջելով ոտիւք իւրովք զանիւն. որ 'ի փոյթ եդեալ է միշտ վասն գործոյ իւրոյ։ և ներթուո՛ղ է ամ իրակութի նր։ * Բազկաւ իւրով կերպաւորէ զկաւն՝ և առաջի ոտից իւրոց գճկեսցէ զզօրութի իւր։ * Զսիրտ իւր տացէ՝ զի աւարտեսցէ զծեփումն. և տքնութի նորա մաքրեսցէ զբով նր։ * Ամենեքեան սոքա 'ի ձեռս իւրեանց յուսացան. և իւրաքանչիւրոք յարուեստ իւր իմաստուն է։ * Առանց սոցա ոչ շինեսցին քաղաքք։ * Եւ ոչ բնականան. և ոչ ներաշրջին. և յեկեղեցիս ոչ արտակայթեսցեն։ * 'Ի վերայ աթոռոյ դատաւորի ո՛չ նստցին. և զվկայութի դատաստանի ո՛չ հասկասցին. և ոչ յայտնեսցեն զխրատ և զդատաստան. և ներ առակաց մի՛ գտցին։ * Այլ զստեղծուա՛ծ մշտնջենաւորի հաստատեսցեն. և մաղթանք նոցա ներ իրակութե արհեստի. յարմարողք զանձինս իւրեանց և զննողք յօրէնս բարձրելոյն։

## Գլ։ ԼԹ.

1 Զիմաստութի ամենեցուն նախնեաց խուզեսցէ իմաստունն։ և 'ի մարգարէութիս պարապեսցի։

2 * Զպատմութիս արանց անուանեաց պահեսցէ. և 'ի տաղաչափութիս առակաց 'ի միասին ներամտցէ։ 3 * Զծածուկս առակաց խուզեսցէ. և ներ դաղեւոց առակաց անդրադարձցի։

4 * 'Ի մէջ մեծամեծաց սպասաւորեսցէ. 5 և առաջի նախարարաց երևեսցի։ * Յերկիր այլասեռից ազգաց արտադնասցէ. զի զբարիս և զչարս ներ մարդոց 6 փորձեսցէ։ * Զսիրտ իւր բացատրէ առ 'ի հսկել կանխաւ առ Տր՝ որ արար զնա. և առաջի բարձրելոյն աղաչեսցէ։

7 * Բացցէ զբերան իւր աղօթիւք. և սակս յանցանաց իւրոց աղաչեսցէ։

8 * Զի եթէ Տրն մեծ կամեսցի. հոգւով գիտութե վերալցուսցէ զնա։

9 * Եւ նա իբրու տարափ առաքեսցէ խօսս իմաստութե իւրոյ. և աղօթիւք 10 խոստովանեսցի Տն։ * Եւ ինքն ուղղեսցէ զխորհուրդս նորա. և զհմ_

տութի. և զաղտնեօք իւրովք խորհր-
դակցեսցի: *Նա յայտնի արասցէ 11
զհմտութի ուսման իւրոյ. և յօրէնս
ուխտութեան Տն պարծեսցի: *Գովես 12
ցեն բազումք զիմաստութի նորա. և
մինչև յաւիտեան ոչ ջնջեսցի: *Ոչ յետս 13
դարձցի յիշատակ նորա. և անուն նր
յուզեսցի յազգս յազգս: *Զիմաս 14
տութի նորա պատմեսցեն ազգք. և զգո
վութի նորա հռչակեսցէ եկեղեցի:
*Թէ մնասցէ՝ զանուն թողցէ առաւ 15
ել ևս քան զհազարս. և թէ հանգիցի՝
օգուտ լիցի նմա: *Արդ՝ են խորհր- 16
դակցիմ, զի ճառեցից. զի ոճ բարկու
թբ լցեալ գոմ: *Չայնիւ ասէ, 17
լուարուք ինձ պտուղք տծայինք. և
իբրև վարդենի տնկեալ ՚ի վր առուաց
ջուրց պտղաբերեցէք: *Իբրև զկի- 18
նամոն զհոտ համեղութէ կալարուք:
*Ծաղկեցէք զծաղիկս իբրև զշու- 19
շան. և տուք զհոտ. և բղխեցէք ՚ի
շնորհս: և երգեցէք զերգս՝ և օրհնե-
ցէք զՏր ՚ի գործս իւր: *Տուք անուան 20
նորա զմեծութի. և խոստովան եղե-
րուք նմա ձայնիւ շրթանց ձերոց. և
յերգս շրթանց՝ և քնարիւք: և այս-
պէս ասասջիք ՚ի խոստովանութէ:
*Գործք Տն բոլորանդակք բարիք են 21
յոյժ: *Բանիւ նորա կայ ջուր իբրև 22
զկարկառ. և խօսիւք բերանոյ նորա
իբրև զամբարցուցումն ջուրց: *Բան- 23
զի ՚ի հրամանում նորա հանդարտու-
թի լինի. և ոչ է սորկութի յողջութէ
նորա: *Գործք ամե մարմնոյ առաջի 24
նորա: և ոչ է իր ինչ ծածկեալ յաչաց
նր: *Յաւիտենէ մինչև յաւիտեան նկա 25
տէ. և ոչ է սքանչելի առաջի տեսութէ
նր: *Ոչ է ասելի՝ զինչ է այս. զի ամե- 26
նեքեան ՚ի ժամանակի իւրում յուզես-
ցին: *Օրհնութի նր իբրև զգետ 27
ոռոգեաց: *Որպ հեղեղ պերիթաց- 28
եալս արբեցոյց՝ այսպէս բարկութի նր
զազգս՝ որք ոչ խնդրեցին զնա՝ ժառան
գեսցէ: *Որպ դարձոյց զջուրս 29
՚ի ցամաքութի և ցամաքեալ է երկիր.
և ճանապարհք նր քան զճանապարհս
նոյ հարթեալք են: այսպ մեղաւորաց
գթմունք բարկութե նր: *Բարիք 30
բարեաց ստեղծան ՚ի բնէ. այսպէս չա
րագունից բարիք և չարք: *Նախ- 31
կին իրի հարկաւորի կենաց մարդկան.
ջուր, հուր, և երկաթ. աղ. կաթն. և
հաց նաշհեղէն, և մեղր՝ և ոռ խաղո-
ղոյ. և ձէթ. և հանդերձ: *Այսո- 32
քիկ ամենեքեան սրբոց ՚ի բարիս. այս
պէս և ամբարշտաց և մեղաւորաց ՚ի
չարիս յեղաշրջին: *Են հողմք. որք 33
առ ՚ի վրէժխնդրութի ստեղծան. և

Ծննդ. 1.31. Մար. 7.37. Ծննդ. 8.3. Եբր. ըստ դատաստ րան. Եւ ոչինչ է. Ծննդ. 7.17. Ելից. 14.21. Բարիք բարեաց. Եր. 29.28.

սրտմտութէ նր հաստատեցին զտան-
34 ջանս իւրեանց: *՚Ի ժամանակում
կատարածի հեղցեն զզօրութիւն. և
զսրտմտութի նորա. որ արար զնոսա՝
35 հանդարտեսցուսցեն: *Հուր՝ կար-
կուտ. սով. և մահ. ամենեքեան այսո
քիկ առ ՚ի վրէժխնդրութի ստեղծեալք
36 են: *Գազանաց ժանիք. և կարիճք.
և օձք. և լարք՝ վրէժխնդիրք ՚ի սպա
37 ռումն ամբարշտաց: *Ի հրամանաց
նորա կերակրեսցին. և ՚ի վերայ երկրի
՚ի հարկաւորութի նախապատրաստե
ցին. և ներ ժամանակաց իւրեանց ոչ
38 յանցանիցեն զբանիւ: *Վասն այսո
րիկ ՚ի բնէ հաստատեցայ և խորհրդակ
ցեցայ՝ և խորհեցայ. և գրեալս թո
39 ղի: *Ամենեքեան գործք Տն բարիք.
և ամ գործ ներ ժամում իւրում սպա
40 սաւորեսցէ: *Ոչ է ասելի. այս քան
զայն չարագոյն է. զի ամենեքեան ՚ի
ժամանակի իւրում չարափորձին:
41 *Արդ այժմ նամենում սրտում և բե-
րանում համագովլեցէք. և օրհնեցէք
զանուն Տն:

Ծննդ. 1.31.

## Գլ. Խ.

1 Զբաղումն մեծ ստեղծաւ ամենե
ցուն մարդոց. և լուծ ծանր ՚ի
վր որդւոց ադամայ. յօրէ ելից յորո
վայնէ մօր նց. մինչև յօր գերեզմանի
2 ՚ի մայրն ամենեցուն: *Խորհուրդ նց՝ և
երկիւղք սրտի. և գիւտ ակնկալութէ.
3 և աւուրք անարտման: *Ի բազմոցէն
՚ի վերայ աթոռոյ փառաւորադունի
մինչև առ ստորուկն. որ նստի յերկրի
4 և մոխրոյ: *Յայնմանէ որ վարի կա-
պուտակաւ՝ և բառնայ զպսակ. մինչև
առ այն որ ծածկի վշով թերակաստ
րաւ: բարկութի. նախանձ. գրգռու
թի. խռովութի. և երկիւղ մահու.
ոխութի հանապազորդեան. հեռ:
5 *Եւ ՚ի ժամանակի վերանորոգութէ
յանկողնի՝ երազ գիշերոյ փոփոխէ զգի
6 տութի նր: *Գոյզն ինչ իբրև ոչինչ
՚ի հանգստեան. և յայնմանէ ներ երա
զոյ՝ որպէս ՚ի տուընջեան նկատման:
7 *Խռովեալ է ներ տեսլեան սրտի
իւրոյ. զիարդ փախնուցու ոք յաւուր
պատերազմի: ՚ի ժամանակի փրկու-
թէ իւրոյ յարեաւ՝ և զարմացեալ առ
8 ոչինչ երկիւղ: *Հանդերձ ամենայն մար
մնով. ՚ի մարդոյ մինչև յանասունս.
՚ի վերայ մեղաւորաց եօթնպատիկ:
9 *Ու այսոքիկ մահ. արիւն. հակա-
ռակութի. և դայխուն. նեղութիք.
10 սով՝ բեկումն. և չարչարանք: *Ի վր
անօրինաց ստեղծան այսոքիկ ամենե.
11 և վասն նց եղև հեղեղ: *Ամենայն որ յերկ
րէ

Խորհ. Եր. 39.34. Ծննդ. 7.10.

Ժողով. 1. 7. րն են՝ յերկիր անդրադարձցին. ‖ և ամենայն ջուրք ՚ի ծով վերադարձցին։

12 *Ամենայն կաշառ՝ և անիրաւութիւն ջնջեսցի. և հաւատ յաւիտեան մնասցէ։ 13 *Ընչութիւնք անիրաւաց որպէս զգետ ցամաքեսցին. և որպէս զորոտումն մեծ ներ անձրևոց որոտասցեն։ 14 *Ի բանալ զձեռս իւր բերկրեսցի. այնպէս յանցաւորք ՚ի կատարածի տապեսցին։ 15 *Թոռունք ամբարշտաց ոչ բազմապատկեսցեն զճիւղս. և արմատք անմաքուրք ՚ի վերայ գագաթան վիմի հնչեն։ 16 *Ի վերայ ամենայն ջրոյ կանաչուտ. և առ ափն գետոյ նախ քան զամենայն դալարի վերընձիւղեսցի։ (արմատախլեսցի։)

17 *Շնորհ որպէս դրախտ ներ օրհնութեանց. և ողորմութիւն մինչև յաւիտեան յարամնայ։ 18 *Կեանք ինքեան բաւականի գործունէի շարաքաղցրասցին. և ՚ի նոսա գտանիցես զգանձ։ 19 *Որդիք, և շինութիւն քաղաքի հաստատէ զանուն. և ՚ի վերայ քան զոսա կին անարատ համարեսցի։ 20 *Գինի և երաժշտականութիւն զուարթացուցանեն զսիրտ. և ՚ի վերայ քան զերկաքանչիւրն իմաստութիւն։ 21 *Փողք և սաղմոսարան առնեն զհամեղ քաղցրանուագութիւս. և ՚ի վերայ քան զերկաքանչիւրն համեղալեզուն։ 22 *Շնորհի և տեսակի ցանկայ ակն քո. և ՚ի վերայ քան զոսա դալարիք բուսականք։ 23 *Բարեկամ և համշիրակ ՚ի ժամանակի յարմարեալք. և ՚ի վերայ քան զերկոսեանն կին ընդ առն։ 24 *Եղբարք առ օժանդակութիւն ՚ի ժամանակի վշտի. և ՚ի վերայ քան զոսա ողորմութիւն փրկեսցէ։ 25 *Ոսկի և արծաթ է շարականութիւն ոտից. և ՚ի վերայ քան զերկոսեանն խորհուրդ բարեհաճոյ։ 26 *Կարողութիւնք և զօրութիւնք բարձրացուցանեն զսիրտ. և ՚ի վերայ քան զոսա երկիւղ Տեառն։ 27 *Ոչ է ներկիւղում Տեառն սպառնալիք. և ոչ է ՚ի նմա ներայուզել զօգնութիւն։ 28 *Երկիւղ Տեառն որպէս դրախտ օրհնութեան. և ՚ի վերայ քան զամենայնեան փառս ծածկեցին զնա։ 29 *Որդեակ ՚ի ժամանակի կենաց քոց մի կարօտասցիս. զի բարւոք է մեռանիլ՝ քան կարօտիլ։ 30 *Այր ակնարկող ՚ի սեղանս այլոյ՝ ոչ է կեանք նորա ներ խոկմանն կելոյ. զի կերակրէ զանձն իւր կերակրօք օտարօք։ 31 *Բայց այր կրթեալ և խրատեալ պահեսցէ զինքն. ՚ի բերանում անհանճարից քաղցրանայ անընչութիւն. և ներ որովայնում նորա հուր արծարծեսցի։

## ԳԼ: ԽԱ։

1 Ով մահ՝ որպէս դառն է յիշատակ քո. առն զխաղաղութիւն ունողի ներ դոյից իւրոց։ 2 *Առն հանդուցելոյ՝ և որոյ յաջողեալ են ուղիղք ներ ամենայն. և գտեալ է կարողի առնուլ զկերակուր։ 3 *Ով մահ՝ բարի է դատաստան քո մարդոյ կարօտացելոյ. և որ նուաղիցի ՚ի զօրութենէ։ 4 *Պակասութիւն հասակի. և որոյ սակս ամենայն ջան է. և անհաւատալի՝ որ կորուսանէ զհամբերութիւն։ 5 *Մի՛ զանդիտեր ՚ի դատաստանէ մահու. յիշեա՛ որք յառաջ քան զքեզ եղեն. և որք վերադալոց են քեզ. այս 6 դատաստան ՚ի Տեառնէ ամենայն մարմնոյ։ *Եւ՛ որինչ վերադայցեն քեզ ՚ի բարեհաճութենէ բարձրելոյն. կամ տասն. կամ հարիւր՝ կամ՝ հազար ամք։ 7 *Զի ոչ է ՚ի դժոխս յանդիմանութիւն կենաց։

8 *Որդիք գարշութեանց լինին որդիք մեղաւորաց. և որք կործանեսցին առ տունս ամբարշտաց։ 9 *Որդւոց մեղաւորաց կորիցէ ժառանգութիւն. և ընդ զաւակի նոցա հանապազորդութիւն նախատանաց։ 10 *Զհայր անդթոյ խնդրեն որդիք. քանզի վասն նորա են ՚ի նախատինս։ 11 *Վայ ձեզ արք անդութք. որք թողիք զօրէնս Տեառն բարձրելոյ։ 12 *Եւ թէ ծնանիջիք, յանէծս ծնանիջիք. և թէ մեռանիջիք, յանէծս եղիցի մասն ձեր։ 13 *‖Ամենայն, որք յերկրէ են՝ յերկիր վերադարձցին. այնպէս ամբարիշտք յանիծելոյ ՚ի կորուստ։ (‖ Վեր. 40. 11.) 14 *Սուգ մարդոց ներ մարմինս ինքեանց. իսկ անուն ամբարշտաց ջնջեսցի։ 15 *Զգոյշ սակս բարւոյ անուան. զի այս առաւել յաւէտ մնասցէ քեզ. քան հազարք գանձք ազնուականք և մեծամեծք։ 16 *Բարեաց կենաց թիւ աւուրց. իսկ անուն բարի յարամնասցէ յարակայ։

17 *Զխրատ խաղաղութեամբ պահեցէք որդիք. ‖ զի իմաստութիւն թաքուցեալ՝ և գանձ անտես՝ զինչ օգուտ ՚ի յերկաքանչիւրոցն։ (‖ Վեր. 20. 32.) 18 *Լաւագոյն է մարդ՝ որ թաքուցանէ զյիմարութիւն իւր. քան զմարդ որ թաքուցանէ զիմաստութիւն իւր։ 19 *Սակայն պատկառեցարուք յայսցանէ՝ որք յառաջգամն ՚ի բերանոյ իմմէ։ 20 *Զի ոչ է բարի զամենայն զվերապատուութիւս պահել. և ոչ ամենայն ամենեքումբք բարեպէս հաճոյանան ներ հաւատոյ։ 21 *Պատկառեցարուք ՚ի հօրէ և ՚ի մօրէ յաղագս պոռնկութեան. և ՚ի նախագահից՝ և ՚ի կարողաց 22 սակս ստութեան։ *Յիշխանաց՝ և ՚ի դատաւորաց սակս յանցանաց. ՚ի ժողովարանէ և ՚ի ժողովրդոց սակս օրինազանցութեան։ 23 *Յընկերաց՝ և ՚ի բարեկամաց սակս անիրաւութեան. և յաղագս 24 տեղւոյ նորում բնակիս, *Ի գողութէ, յաղագս ճշմարտութեան Այ, և կտակարանի. սակս բարձակցաց ներ հա_

հայիցդ' 'ի գաղտագողութենէ տալոյ և առնլոյ :* Յողջունողաց յաղագս լռութեան .'ի հայեցմանէ կնոջ պոռնկի . և 'ի դարձուցմանէ դիմի ծանօթի : 25 * Մի դարձուսցես զերեսս 'ի մերձաւորէ քումմէ . և 'ի բառնալոյ զմասն և ոչ զդէմ ունելոյ :* 26 ‖ Մի հայեսցիս 'ի կին առն այլոյ . և մի զննեսցես զաղախին նր . և մի կացցես առ անկողին նորա : 27 * 'Ի բարեկամաց սակս խօսից նախատանաց . երբ տացես, մի նախատեսցես : 28

Եւ ոչ հատուցանելոյ

‖ Մատթ. 5.28.

## ԳԼ: ԽԲ:

Մի կրկնեսցես զզրոյց լուեալ' սակս յայտնութեան զրուցի թաքուցելոյ. և եղիցիս ճշմարտապէս թարց թաքսուի : և գտցես զշնորհ առաջի ամենայն մարդոց : մի վն այսոցիկ ամենայն զամօթկրեսցես ‖ և մի աչառիցես երեսաց' զի յանցանիցես : 1 * Յաղագս օրինի բարձրելոյն' և կտակարանի . և յաղագս դատաստանի արդարացուցանել զամբարիշտն : 2 * Սակս բանի ընկերաց և ճանապարհակցաց' և յաղագս տրոց ժառանգութեան բարեկամաց : 3 * Սակս համահաւասարութեան չափուց և կշռոց . սակս զննութեան յոլովից և սակաւուց : 4 * Յաղագս ստականութեան գնոց և վաճառականաց . և սակս բազմի խրատու որդւոց . և ծառայի չարագունի զկող արիւնել : 5 * Ի վն կնոջ չարաբարոյի բարի է նշան : 6 * Ուր ձեռք բազումք են, փակեա . և որոյ ձեռս տաս , թուեա և կշռեա : բայց զտուրս և զառս զամ գրեա : 7 * Սակս կրթութեան անզգայի և յիմարի. և յաղագս ծերոց' որք դատին յերիտասարդաց . և իցես խրատեալ ամենեքումբք . և ընտիր առաջի աչաց ամենեցուն կենդանեաց : 8 * Դուստր թաքուցեալ տքնութի է հօր . և վարանումն նր 'ի բաց եբարձ զքուն : մի գուցէ 'ի մանկութեան իւրում շնութեան հետևեսցի : և ընդ առն շարայամեալ ատելի լիցի : 9 * մի երբեք խախտեսցի 'ի կուսութեան իւրում . և ծնողաց իւրոց ծանրացեալ գտցի : մի գուցէ ընդ առն յարամնացեալ արտադնասցէ : կամ ստուգաբար ամուլ բացերևեսցի : 10 * Ի վն դստեր վավաշոտի հաստատեա զպահապան . մի երբեք արասցէ զքեզ յառակ լինել թշնամեաց : 'ի չարախօսութենէ ներ քաղաքում . և յապստամբութենէ ամբոխից : և յամօթ առնէ զքեզ 'ի բազմութեան ժողովրդեան : 11 * Ամենայնի մարդոյ մի հայիր 'ի տեսակն . և 'ի մէջ կանանց մի յամենար : 12 * Քանզի 'ի հանդերձից յառաջ գայ ցեց . և 'ի կնոջէ անիրաւութի առն : 13

Թարց ամօթոյ

‖ Ղևտ. 19.15. 2. Օրէ. 1.17. և 16. 19. Առակ. 24. 23. Յակոբ. 2. 2.

սակս տրոցման

Եւ յապստամբման ամբոխին

14 * Քանզի բարեգոյն է անիրաւութի առն' քան կին բարերար : և կին խառնակ յառակ : 15 * Արդ յիշօղ լեր գործոց Տն . և զորս տեսի, ճառեսցիս : խօսիւք Տն գործք նր : 16 * Արեգակն լուսաւորօղ 'ի ձեռն ամենայն նկատէ . և փառօք Տն լի է գործ նր : 17 * Ոչ ապաքէն Տէր արար զսուրբս ճառել զամենայն զքանչելիս իւր : զոր հաստատեաց Տր ամենակար կալանալ 'ի փառս իւր : 18 * Զանդունդս' և զսիրտ մարդոց հետազօտեաց . և ներքերմութեան նց խորհեցաւ : 19 * Զի ծանեաւ Տր զամ գիտութի . և ներհայեաց 'ի նշան յարաձգականի . ճառեալ որք նախ անցին : և որք յապայ գալոց են . բացատրօղ գշաւիղ ծածկեցելոց : 20 * Ոչ անդրանցանէ քան զնա ամ միտածութի . և ոչ թաքուցանէ զինքն 'ի նմանէ ոք զրոյց : 21 * Մեծագնութի իմաստութեան իւրոյ վայելչացոյց . որ է նախ քան զյաւիտեան . և մինչև յաւիտեան . ոչ առաւելեալ է : 22 * Եւ ոչ նուաստանայ . և ոչ կարօտանայ այլոյ ումեք խորհրդեան : 23 * Որքան ըղձալիք են ամենայն գործքն նր . և իբրև կայծակն' զոր է խոկալի : 24 * Ամենայն այսոքիկ կեան . և մնան յաւիտեան . և նամենում' հարկաւորութե ամենայն ստորալսեն նմա : 25 * Ամենայն երկպառակութիք . մինն ներհակ միոյն . 26 և ոչ արար զիրինչ ոչ գոլ : * Իւրաքանչիւրոյ հաստատեաց զբարիս . և ո ոք բաւականասցի տեսանելով զփառս նր :

## ԳԼ: ԽԳ:

1 Բարձրութեան հաստատութի գեղեցկութի է նր . տեսակ երկնի 'ի տեսութեան փառաց : 2 * Արեգակն 'ի հայեցման հրատարակօղ յելանելն . անօթ սքանչելի գործ բարձրելոյն : 3 * Ի միջօրէում տապացուցանէ զերկիր . և առաջի խորշակի նորա ով կարէ տևել : զհնոց պահեալ 'ի գործ խորշակի : 4 * Եռապատիկ արեգակն տապացուցեալ զլերինս . զշառաւիղս հրեղէնս արտաշնչէ . և վերափայլեալ շառաւիղօք իւրովք խաղտէ զաչս : 5 * Մեծ է Տր' որ արար զնա . և խօսիւք նր աճապարեաց 'ի գնացս : 6 * Եւ լուսինն յամենայն 'ի ժամանակի իւրում . ցուցակ ժամանակի և նշան յարակայական : 7 * Ի լուսնոյ նշան աւուր տօնի . լուսաւորել որինչ նուազանայ 'ի կատարածի : 8 * Ամիս որ' անուն ըստ անուանն նր է . աճեալ զարմանաբար 'ի կատարման : 9 * Անօթ ամրոցաց 'ի բարձունս . 'ի հաստատութեան երկնի վերափայլեալ փառաւորագունաբար : 10 * Զարդ երկնի

փառք

փառք աստեղաց · զարդարէ լուսաւո-
րող 'ի բարձունս Տր։ *Բանիւ սրբոյն կանգ- 11
նին 'ի դատաստան · և ոչ պակասեսցին
'ի հսկմանէ իւրեանց։ *Տես զաղեղն · 12
և օրհնեա զնա՝ ‖ որ արար զնա · կարի
գեղեցկատեսիլ է 'ի փայլման իւրում։
*Շուրջպատեաց զերկինս ներ շրջա- 13
նակաւ փառաց իւրոց · ձեռք բարձրե-
լոյն բացին զնա։ *Հրամանաւ իւրով 14
փութացոյց զձիւն · և փութացուցանէ
զփայլատակմունս առաձգել դատաս-
տանի իւրոյ։ *Վասն այսորիկ բացան 15
գանձք՝ և թռեան մէգք իբրև զթռ-
չունս։ *Ի մեծութե իւրում եդ զամպս՝ 16
և պատառեցան քարինք կարկտի։
*Յերևալ նր շարժեսցին լերինք · և 17
'ի կամս նր շնչեսցէ հարաւ։ *Ձայն 18
որոտման նր կշտամբէ զերկիր՝ մրրիկ
հիւսիսային · և հաւաքումն հողմոյ։
*Եւ որպ հաւ 'ի բաց եդեալ առ 'ինստիլ 19
սրսկէ զձիւն · և որպ մարախ ընկղմեալ
իջումն նր։ *Զգեղեցկութե պայծա- 20
ռութե նր զարմասցի ակն · և 'ի վերայ
տարափոյ նր պակնուցու սիրտ։ *Զե- 21
ղեամն իբրև զաղ հեղցէ 'ի վր երկրի ·
և երբ սառուսցէ · եղիցի իբրև զփուշ
տատասկի։ *Ցրտութի հողմ հիւսի- 22
սոյ շնչեաց · և սառուցց զապակի 'ի ջրոյ ·
'ի վր ամ հաւաքման ջուրց հանգչիցի ·
և իբրև զրահ զգեցուսցէ զինքն ջրովք։
*Նա լափեսցէ զլերինս · և կիզցէ զա- 23
նապատ · շիջուսցէ զդալարիս իբրև
զհուր։ *Բժշկութի ամենեցուն ներ փու- 24
թացութե մգի · և ցօղ պատահեալ 'ի
տապոյ եկեղոյ զկակուղ բացակատարէ
զնա։ *Խորհուրդ նր լռէ հողմ · և խոր- 25
ման իւրով հաւանեցաւ անդնդոց · և
տնկեաց 'ինմա Տր զկղզիս։ *Որք նաւեն 26
'ի ծովու ձառեն զաստուծութիս նր ·
և լուեալ ականջօք մերովք զարմա-
նամք։ *Անդ են գործք պայծառք և 27
զարմանալիք · զանազանք գազանաց
սեռք · և ամենայն խաշանց · և ստեղծու-
ածք պատառողաց։ *Վն ինքեան հաս 28
տատեցաւ գնացից վերջ · և խորհուրդ նր
շարադրեցան ամէն։ *Զբազումս ա- 29
սասցուք՝ և պակասիցուք 'ի բանից։ իսկ
կատարած խօսից՝ ինքն է ներ ամենե-
ցուն։ *Պարծեցեալք առ որ կարաս- 30
ցուք · զի ինքն է ամենակարօղ՝ 'ի վր
ամենեցուն գործոց իւրոց։ *Ահարկու 31
Տր, և մեծ · ահագնաբար և սքանչելի
կարողութի նր։ *Փառաւորօղք զՏր 32
որքան միանգամ և կարիցէք, զի առա-
ւել կարացեալ է դեռևս · և զարմանա-
լի մեծագործութի նր։ *Օրհնօղք 33
զՏր բարձրացուցէք զնա՝ որքան կա-
րէք · զի մեծագոյն է քան զամ գովու-

Ծննդ. 9.13.

Եւ խոր-
հրդեամբ իւր-
ով հան-
դարտե-
ցոյց զան-
դունդս

34 թի։ *Բարձրացուցանելով զնա զօ-
րացարուք զօրութե · մի լքանիք՝ իբ-
35 րու ոչ ըմբռնիցէք։ *Ով տեսցէ զնա ·
և ձառեսցէ · և ով մեծացուսցէ զնա ·
36 որպ է 'ի սկզբանէ։ *Բազումք մեծա-
գոյնք ծածկեալք են սոքօք · զի զսա-
կաւս տեսաք գործոց նր · բայց զամե-
նեսեան Տէր արար · և գթածաբար
իրակողաց ետ զիմաստութի։

Մեծա-
գոյնք քան
զսոսա
ծածկեալ
են · զի

## ԳԼ. ԽԴ.

1 Գովեսցուք զարս փառաւորդօնս ·
և զծնօղս մեր՝ 'ի սերականութե
2 իւրեանց։ *Զբազում մեծարանս արար
Տր մեծագործութե իւրով յաւիտենից։
3 *Տիրօղք զօրութեք իւրեանց՝ մար-
դիկք մեծամեծք զօրութե · և խորագի-
տութե իւրեանց պերճացեալք · ձառեալք
մարգարէիւք զարժանաւորութի մար-
4 գարէից։ *Եւ հրամայօղք ներկայիս ժո-
ղովրդեան։ և զօրութե խորագիտութե
5 ժողովրդոց զբանս սրբեալս։ *Տեղեկու-
թե իւրեանց զվերախուզօղս եղանա-
կաց երաժշտականաց · և զձառօղս ստա-
6 նաւորաց գրոց։ *Զարս մեծատունս
զօրութե · և զունօղս՝ զկրթութի գե-
ղեցկութե։ խաղաղացեալս ներ տանց
7 իւրեանց։ *Ամենեքեան սոքա ներ սե-
րականութեց ցեղից իւրեանց զփառս առ-
ընկալան։ և յաւուրս իւրեանց ունէին զգո-
8 վութիս։ *Կայք 'ի նոցանէ ծնեալ, յետ
թողլին զանուն ձառելոյ զգովութիս
9 նց։ *Եւ են որոց ոչ գոյ յիշատակ · և
կորեան իբրև այնք, որք ոչ իցեն · և
ծնան, իբրև ոչ ծնեալք · և որդիք նց
10 ը ինքեանց։ *Բայց այնոքիկ արք ողոր-
մութե են · որոց գթութիք ոչ պակա-
11 սեցան։ *ընդ սերման նց յարամնան
12 բարիք։ *Ժառանգ սը թոռն նց · և 'ի
13 վկայութե եկաց զաւակ նց։ *Եւ որ
դիք նց վն նց մինչև յաւիտեան մնան ·
զաւակ նց՝ և փառք նց՝ ոչ 'ի բաց թող-
14 ցին։ *Մարմինք նց 'ի խաղաղութե թա-
ղեցան · և անուն նց կեայ յազգէ յազգ։
15 *Զիմաստութի նց վիպասանեն ժո-
ղովուրդք · և զգովութի նց հռչակես-
16 ցէ եկեղեցի։ *‖Ենոք հաճոյացաւ այ՝
և վերափոխեցաւ 'ի դրախտն · զի տա-
ցէ հեթանոսաց զապաշխարութի։
17 *‖Նոյ գտաւ կատարեալ՝ արդար՝ և 'ի
ժամանակի բարկութե եղև վերահաս-
18 տութի։ *Վն այնորիկ թողաւ յետնա
մնաց երկրի · յորժամ եղև հեղեղ։
19 *‖Վկայութիք յաւիտենի եդան առ
նա · ոչ ջնջիլ կարաց հեղեղաւ ամ մար-
20 մին։ *‖Աբրահամ մեծ հայր բազմու-
թե ազգաց։ և ոչ գտաւ նման նմա 'ի
պարծանս · որ պահեաց զօրէն բարձրե-
լոյն։

Ծննդ. 5.21.
Եբրայ. 11.5.
Ծննդ. 6.9: և 7.1.
Եբրա. 11.7.
Ծննդ. 9.9.
Ծննդ. 12.2. և 15.5.

լոյն․ և եղև վկայութե՛ ընդ նմա։ *Ի 21 մարմնոջ նր̃ կայացոյց զվկայութի՛ն․ և ներ փորձութե՛ գտաւ հաւատարիմ։ *Վ̃ այնորիկ հաստատուն երդմամբ 22 եդ նմա զպարծանս ներ ցեղոջ իւրում․ աճեցուցանել զնա իբրև երկրի կարկաւ․ *և իբրև զաստեղս բարձրացուցանել 23 զզաւակ նր̃․ և ժառանգեցուցանել զնս̃ 'ի ծովէ մինչև 'ի ծով․ և 'ի գետոյ մինչև առ ծագս երկրի․ *Նմ̃ 24 առ իսահակ այնու եղանակաւ արար վս̃ աբրահամու հօր նր̃․ *Օրհնութի 25 ամենայն հեթանոսաց ետ նմա Տր̃․ և ըզ վկայութի՛ն հաստատեաց 'ի վր̃ գլխոյն յակոբու․ *Ընկալաւ զնա օրհնութբ̃ք 26 իւրովք՝ և ետ նմա զժառանգութի․ և բաժանեաց նմա զբաժինս ցեղիւք երկոտասանիւք․ *Նմ̃ շարապահեաց 27 նմա զայր ողորմութե՛ զգտանօղս շնորհաց յաչս ամ̃ի մարդոյ։

## Գլ․ ԽԵ։

Սիրելի Ա̃յ և մարդկան մովսէս․ որոյ 1 յիշատակն օրհնութբ̃ է։ *Նմանն 2 ինքեան արար 'ի փառս սրբոց․ և մեծացոյց զնա յերկիւղ թշնամեաց․ և բանիւք իւրովք բացայայտեալ սիրեաց։ *Փառաւորեաց զնա առաջի 3 թագաւորաց․ և զհրամանս ետ նմա առաջի ժողովրդեան իւրոյ․ և եցոյց նմա զփառս իւր։ *Հաւատով և հա 4 մեստութեամբ իւրով սբ̃ արար զնա․ և ընտրեաց զնա յամ̃է մարդոյ։ *Ետ լսել նմա․ և ձայնին նր̃․ և առաջնորդեաց 5 նմա յամպն․ *Նմ̃ ետ 6 նմա հանդէպ հրամանաց՝ և զօրէնս կենաց և մտացութե․ ուսուցանել յակոբու զվկայութի՛ն իւր․ և զիրաւունս իւր իլի․ *Բարձրացոյց զահարօն զեղ 7 բայր նր̃․ և զնմանիս ինքեան 'ի ցեղէն ղևեայ․ *Կացոյց նմա զվկայութիւն 8 մշտնջենաւոր․ և ետ նմա զքահանայութի ազգի․ երանելիս արար զնա փառօք։ *Նմ̃ շուրջպատեաց զնա գօտեաւ 9 փառաց․ և ագոյց նմա զպատմուճան փառաց․ և պսակեաց զնա անօթիւք զօրութե։ *Տուրջ զոտիւքն՝ և վարտ 10 կաւն՝ և վակասաւն եդ նմա․ և գօտեւորեաց զնա բոժոժօք ոսկեղինօք յոգունք ներ շրջանակում։ *տալ ըզ- 11 հնչումն 'ի զգացումն ինքեան․ լսելի առնել զհնչումն 'ի տաճարին․ 'ի յիշատակ որդւոց ցեղի իւրոյ։ *Զպատմուճանն 12 զսբ̃․ ոսկեաւ՝ և կապուտակաւ՝ և բեհեզեաւ՝ գործ ոստայնանկի․ առն իմաստնոյ դատաւորի և ճշմարտութբ̃ հմտացելոյ։ *հիւթիւ̃ կարմրով գործ 13 արհեստաւորի։ ակամբք պատուականօք ձևացելօք կապիւք ոսկւոյ․ և գործով ականակուի քանդակիւք․ 'ի յիշատակ ըստ թուոյ ցեղիցն իլի․ *Պսակ 14 ոսկեղէն 'ի վր̃ թագի նորա բացայայտ նշանաւ սրբութե․ և փառք պատուոյ․ գործ զօրութե․ և ցանկութի աչաց պճնեալ։ *Յառաջ գեղեցիկք նախ քան 15 զնա ոչ եղեն այսպիսիք մինչև 'ի ծագն․ *Ոչ է զգեստաւորեալ նովաւ այլազգի 16 ոք՝ այլ միայն որդիք նորա միայնակ․ և թոռունք նր̃ 'ի ձեռն ամ̃ի ժամանակի։ *Ողջակէզք նր̃ ծախեցան հրով հանա 17 պազորդիւ̃։ *Լցից մովսէս զձեռս նր̃․ 18 և էօծ զնա իւղով սրբով։ *Եղև նմա 19 'ի վկայութի մշտնջենաւոր՝ և զաւակի նր̃ ոմ̃ զաւուրս երկնի․ պաշտամաւորիլ քահանայութբ̃․ և ունիլ զգովասանութի․ և փառաւորել զժողովուրդ իւր յանունն նր̃։ *Զնա ընտրեաց յամե 20 նից կենդանեաց՝ մատուցանել զնուէր Տն̃՝ զխունկ․ և զբարի հոտ, 'ի յիշատակ հաճոյանալոյ փոխանակ ժողովրդեանն իւրոյ։ *Նմ̃ ետ նմա հրամա- 21 նօք իւրովք զկարողութի 'ի կտակարանս դատաստանաց․ ուսուցանել զյակոբ վկայութբ̃․ և օրէնօք իւրովք տալ զլոյս իլի։ *Սասան զի ներհակ 22 կային նմա օտարք՝ և վս̃ մախանաց շրջապատեցին զնա մարդիկք յանապատին․ այքէին ընդ դաթանայ և աբիրոնի․ և ժողովն կորխայ ցասմամբ։ *Ետես Տր̃ Ա̃ծ և ոչ հաճեցաւ ընդ 23 նմա․ և ծախեցան դիմեցմամբ ցասմանն։ *Արար նշ̃ նշանս․ և ծախեաց 24 զնոսա բոցով հրոյ։ *Նմ̃ յաւել ահա- 25 րօնի զփառս․ և ետ նմա զժառանգութի․ և զառաջաւորս պտղոց երկրի բաժանեաց նմա։ *Զհաց նշ̃ ներ առա- 26 ջաւորաց պատրաստեաց 'ի բաւականութի․ զի և զնուէրս Տն̃ կերիցեն․ զորս ետ նմա, և զաւակի նր̃։ *Այլ և 27 յերկրին հեթանոսաց ոչ ժառանգեցուսցէ․ և մասն ոչ է նմա ներ ազգի․ զի ինքն է բաժինն նր̃՝ և ժառանգութի։ *Փենեհէս որդի եղիազարու երրորդ 28 է 'ի փառս համեմատելով զնա երկիւղիւն Տն̃։ *Նմ̃ մնալ 'ի վերապատու- 29 ութե ցեղին․ 'ի բարութե և առոյգութե անձին իւրոյ հաճոյացաւ Ա̃յ փոխանակ իլի։ *Վ̃ այնորիկ կացոյց 30 նմա զվկայութի խաղաղութե․ զիշխան սրբոց և ազգի իւրոյ։ զի լիցի նմա և զաւակի նորա քահանայութե արժանաւորութի 'ի մշտնջենաւոր։ *Նմ̃ 31 զվկայութի դաւթի թագաւորի որդւոյ յեսսեայ 'ի ցեղէն յուդայ՝ ժառանգութի ինքեան և զաւակի նր̃․ զի տացէ զիմաստութի 'ի սիրտ նր̃․ դատել

զազգ-

Ծննդ. 17.10. Ծննդ. 22.1. Գաղա. 3.16. Ելից. 11.3. Ելից. 6.7.8. Թուոց 12.3.7. Ղևտ. 3.2.5. Ելից. 28.35. Ղևտ. 8. 12. Թուոց 16.1. Թուոց 25.7. 1. Մակ. 2.26. և 54.

զայլ իւր արդարութբ. մի՛ ունայնասցին բարութիւք իւրեանց ։ և զփառս ինքեանց 'ի ցեղ նց յաւիտեան արար ։

## ԳԼ: ԽԶ:

1 Զօր 'ի պատերազմի յեսու որդի նաւեայ. յաջորդ մովսէսի ներ մարգարէից. որ եղև մեծ ըստ անուան իւրոյ ։ 2 *Մեծ եղ 'ի կեցուցչութի ընտրելոց Իլ. վանել զթշնամիս յարուցեալս. զի շառաւեղեսցէ զժառանգութի իսրայելի ։ 3 *Որոց փառաց արժանաւորեցաւ ամբառնալով ըզձեռս իւր. և ձգելով ընդդէմ քաղաքաց զդայիսոնն ։ 4 *Ո՛վ ոք առաջի նորա այնպէս ընդդիմացաւ. զի առ թշնամիս ինքնին Տր էած ։ 5 *Ո՞չ ապաքէն 'ի սրտմտութենն նր արգելաւ արեգակն. և մի օրն եղև իբրու երկու ։ (Յեսու. 10. 14.) 6 *Նա կոչեաց զբարձրեալն կարող յընդդիմամարտիլն ընդդէմ թշնամեաց ամ ուստեք ։ և լուաւ նմա մեծն և սուրբն ԱԾ քարեաց կարկտօք արհութե յոյժ հզօրին ։ 7 *Արդելեաց ընդդէմ ազգի թշնամականի. և ներ զառիվայրումն կորոյս զներհակակամսն ։ 8 *զի ծանիցեն հեթանոսք զկարողութի նր. զի ընդդէմ ԱԾ պատերազմիլ ոչէ դիւր էն ։ և հետևեցաւ զկնի հեռոց բարձրելոյն ։ 9 *Եւ յաւուրս մովսէսի զողորմութի արար ինքն. և քաղէբ որդի յեփոնեայ' կալ ընդդէմ թշնամւոյ' և արգելուլ զազգն 'ի մեղաց. և խափանել զտրտունջ չարութե ։ (Թւոց 14. 6.) 10 *Եւ ինքեանք երկոքեանքն կացուցեալք 'ի վտանգէ զերծեալք եղեն. 'ի թուոյ վեցհարիւրոց հազարաց ոտանաւորաց մուծանել զնս 'ի ժառանգութի. յերկիրն որ բղխէ զկաթն և զմեղր ։ 11 *Եւ ետ Տր ինքեան քաղեբայ զզօրութի. և մինչև 'ի ծերութիւն մնաց նմա զօրութի. զի ելանիցէ 'ի բարձր տեղի երկրին ։ և զաւակ նր եհաս ժառանգութիւն ։ 12 *զի տեսցեն ամ որդիքն իսրայելի. զի բարի է հնազանդիլ սրբոյն ԱԾ ։ 13 *Եւ դատաւորք իւրաքանչիւրք իւրով անուամբ. որոց ոչ է ապականեալ սիրտ. ոյք ոչ դարձան 'ի Տէ ։ 14 *զի լիցի յիշատակ նոցա յօրհնութե. և ոսկերք նոցա ատեղնեսցին 'ի տեղւոջէ իւրեանց ։ 15 *և անուն նոցա յարամնասցէ յաւիտեան. յարամնացեալ առ որդիս նոցա' սրբոց արանց փառք ։ 16 *Իղձալի 'ի Տէ ԱԾ իւրմէ սամուէլ մարգարէ Տն. վերածանեաւ զհրաման. և եօծ զիշխանս ներ ցեղում իւրում ։ 17 *Յօրէնսի Տն զժողովն դատեաց. և ետես ԱԾ զյակոբ. և 'ի հաւատոջ իւրում ընտրեցաւ մարգարէ ։ 18 *Եւ ծանուցաւ բանիւք իւրովք հաւատարիմ. քանզի ետես զԱԾ լուսոյ ։ 19 *Եւ առձայնեաց զՏր ամենակարող. 'ի վանումն թշնամեաց շուրջ կացեալք ամ ուստեք. ներ մատուցմամբ գառին անարատի ։ 20 *Եւ որոտաց յերկնէ Տր. և 'ի հնչումն մեծի լսելի արար զձայն զիւրականն ։ 21 *և խորտակեաց զիշխանս տիւրացւոց' և զամենայն իշխանս փղշտացւոց ։ 22 *Եւ նախ քան զժամանակ վախճանի կենաց իւրոց, և արդէնւոյս. զմկայութի ետ առաջի Տն, և օծելոյն զդրամս և մինչև 'ի խրացս յամէ մեղւոյ ոչ էառ. և ոչ ամբաստանեաց զնըմանէ մարդ ։ 23 *Եւ զկնի այսորիկ ննջեաց' և զնշան արար թագաւորի ։ և եցոյց նմա զվախճան կենաց իւրոց ։ և բարձրացոյց զձայն իւր մարգարէութբ յերկրէ ջնջել զամբարիշտն ազգի ։

## ԳԼ: ԽԷ:

1 Զկնի սոցա յարեաւ նաթան մարգարէ' յաւուրս դաւթի ։ (2 Թագ. 12. 1.) 2 *Եւ իբրու ճարպ որոշեալ 'ի մսոյ. այսպէս դաւիթ յորդւոցն իսրայելի ։ 3 *Ընդ առիւծուց խաղաց իբրև ընդ գառանց ։ ընդ արջուց նմանապէս արար որպէս ընդ գառանց ոչխարաց. 'ի մանկութե իւրում ։ (1 Թագ. 17. 34.) 4 *Միթէ ոչ սպան զհսկայն. և եբարձ զնախատինս յազգէն ։ (1 Թագ. 17. 49.) 5 *Առնալով զձեռս սալից պարսի վայր ընկէց զբարձրութի գողիադայ ։ 6 *Զի առ կոչեաց զՏր ամենազօր. և ետ աջով նր բառնալ զմարդն հզօր 'ի պատերազմի. և բարձրացուցանել զեղջիւր ցեղի իւրոյ ։ 7 *Այսպէս 'ի բիւրս փառաւորեաց զնա. և գովեաց զնա օրհնութբ Տն. առ 'ի մատուցանել զպսակ փառաց ։ (1 Թագ. 18. 7.) 8 *Զի խորտակեաց յամ ուրեք զթշնամիս ։ և բնաջինջ արար զփղշտացիսն հակառակս մինչև ցայսօր ժամանակի ։ խորտակեաց զեղջիւր նց մինչև ցյաւիտեան ։ 9 *Յամենայն գործոջ ետ զխոստովանութիւն սրբոյն, և բարձրելոյն' փառաբանութբ ։ 10 *Յամէ սրտէ իւրմէ գովեաց զՏր. և սիրեաց զՏր. որ արար զնա ։ և ետ նմա ընդդէմ թշնամեաց զզօրութի ։ 11 *Եւ կացոյց երգիչս յանդիման սեղանոյն. և 'ի հնչման նց զհամեղս արար զեղանակս ։ 12 *Եւ ետ ներ տօնախմբութեց ներբողեանս. և զարդարեաց զժամանակս մինչև 'ի զբաւումն կենաց ։ զի բարեբանեսցեն զանուն սբ Տն ։ և առաւելացուսցեն առաւօտու զսրբութի ԱԾ ։ 13 *Տէր քաւեաց զմեղս նորա. և բարձրացոյց (2 Թագ. 12. 13.)

յաւի-

յաւիտեան պերճ իւր նորա : և ետ նմա զվկայութի թագաւորութե . և զա_ թոռ փառաց յիէլ : 14 * Օէնի նորին յարեաւ որդի զգօն . և մն նր 'ի վայր ընկէց զամ զզօրութի թշնամեաց : 15 * Սողոմոն հրամայեաց յաւուրս խա ղաղութեան . որոյ ենթադրեաց Ած զամեն զթշնամիս . զի կառուսցէ զտուն անուան իւրոյ . և պատրաստեսցէ զսր բութի 'ի մշտնջենաւորս : որպէս վար ժեցար 'ի մանկութե քում : 16 * և լցար իբրև գետ իմաստութբ . և զերկիր վերածածկեաց հոգի քո : 17 * Եւ վե_ րալցեր համեմատութբք առակաց . 'ի կղզիս բացագոյնս հռչակեալէ ա_ նուն քո . և սիրելի եղեր 'ի խաղաղու_ թե քում : 18 * Եր տաղից՝ և առակաց . և համեմատութեց և թարգմանու_ թեց զարմացեալք են երկիրք :
19 * Եւ յանուն Տն այ . որոյ է մականուն Ած իէլի : 20 * Տարաբերեր իբրև զոս կեպղինձ զոսկին . և իբրև զարճիճ շարալցեր զարծաթ : 21 * Եւ կրկնեցեր զբարձս քո կանանց . զիշխանութիւն ընկալար 'ի մարմնոջ քում : 22 * Ետուր զարատ 'ի փառս քո : և պղծեցեր զսերմն քո ներբերել զցասումն առ զաւակս քո . և զայրանալ 'ի վերայ յիմարութե քոյ : 23 * զի արասցես զհրաման կրկնա պատիկ : և յեփրայիմէ հրամայել ըզ հրաման խիստ : 24 * Իսկ Ած ոչ թողցէ զողորմութի իւր . և ոչ ապարտեսցէ՝ և ոչ ջնջեսցէ զգործս իւր . որ և ոչ կո րուսցէ 'ի շառաւիղէ զթոռունս ընտ_ րելոյ իւրոյ : և զզաւակ նորա՝ որ սիրէ զՏր ոչ եղծցէ : 25 * Բայց ետ զմնացուն յակոբու, և զդաւիթ յայնմանէ շա ռաւիղէ : 26 * Եւ զրաւ ընկալաւ սողո_ մոն ընդ հարս իւր : 27 * Եւ եթող զկնի իւր 'ի սերմանէ իւրմէ զյիմարութի ազգի : 28 * Եւ զնուաղութի 'ի խորհրդ_ դիտութէ՝ զռոբովամ . որ յետս դար_ ձոյց զազգն խորհրդով իւրով : 29 * և զյե րոբովամ զորդի նաբաթայ՝ որ մեղոյց զիսրայէլ . և ետ զճանապարհ մեղան չելոյ եփրայիմայ . և յոգունք մեղքյոր դեցան նոցա : 30 * Կարի յետս դարձու_ ցին զնոսա յերկրէ իւրեանց :
31 * Եւ յուզեաց զամենայնեան զանօրէ_ նութիս . մինչև յորժամ եհաս առ նս պատուհասն . և յամենեցունց մե_ ղաց փրկեաց զնոսա :

## Գլ : ԽԸ :

1 Եւ յարեաւ եղիաս մարգարէ իբրև զհուր . և բան նր իբրև զղամբա րիկ այրիւր : 2 * Որ ներբերեաց առ նս զսով . և կատակօղք զնա սրտմտութբ նորա սակաւացան : զի ոչ կարացին 3 տանել հրամանի Տն : * Բանի Տն ոչ ժուժեաց երկին . և ստորածգեաց ըզ հուր երիցս : 4 * այսպէս առաւելաւ ե_ ղիաս սքանչելեօք իւրովք . և ով կարէ նմանապէս այնպէս պարծիլ 'ի քեզ : 5 * Որ ընկալար զմեռեալն 'ի ստորնայ նոյն 'ի բաժնէ մահու բանիւ Տն Այ : 6 * Որ ստորածգեցեր զթագաւորս առ իշխանն . և փշրեցեր դիւրաւ զզօրու_ թի նց . և զփառաւորագոյնս յանկող 7 նոյ իւրմէ : * Որ լուեր ներ սինայում զդատաստան . և 'ի քորեբ զվրէժխնդ պաշտպանութե : 8 * Որ օծանես զթա_ գաւորս յապաշխարութի . և զմարգա_ րէս առնես յաջորդս զկնի քո :
9 * Որ վերընկալեալ եղեր մրրկաւ հրոյ՝ կառօք երիվարաց հրեղինաց : 10 * Որ գրեցար 'ի դատաստանս ժամս նակաց ցածուցանել զբարկութի Տն . հաշտեցուցանել զսիրտ հօր առ որդիս . և վերահաստատել զցեղս յակոբու : 11 * Երանելիք են՝ որք զքեզ տեսին . և ներ բարեկամութե քում վայելեցին : 12 * Օն մեք միայն կենօք կեամք . բայց յետ մահու ոչ եղիցի այդպիսի անուն 13 մեր : * Երդ հեղիաս մրրկաւ ծած_ կեցաւ . և յեղիսէոս շարահեղաւ հոգի նորա : յաւուրս իւր ոչ երկեաւ յիշխա նաց . և կարողութի ոչոք յաղթեաց 14 նմա : * Եւ ոչ վերացաւ 'ի վերայ նր բան ինչ . և մեռեալ մարմին նորա 15 մարգարէացաւ : * 'Ի կեանս իւր արար զնշանս . և 'ի մահուն սքանչելիս գոր_ 16 ծեաց : * Եր ամենայն այսոցիկ . ոչ ստրջացաւ ժողովուրդն . և ոչ յետս կացին 'ի մեղաց իւրեանց . մինչև 'ի բաց ընկեցան յերկրէ իւրեանց . և ցիր և ցանք եղեն ընդ ամ երկիր :
17 * Եւ թողաւ ցեղ դուզնաքեայ . և իշ 18 խան 'ի տան դաւթի : * Օն ոմանք 'ի նոցանէ արարին . որ ինչ հաճոյ էր Այ . իսկ այլք զմեղս յոլովս առատ 19 րեցին : * Եզեկիաս պարսպեաց զքա ղաք իւր . և ներբերեաց 'ի մէջ նորա զջուր . և փորեաց երկաթիւ զապա_ ռաժն . և շինեաց առ 'ի ջուր զհորն :
20 * Յաւուրս նր ել սենաքերիմ : և առաքեաց զռափսակ . և ամբարձ ըզ ձեռն իւր ընդդէմ նց . և 'ի վեր եբարձ զձեռն իւր 'ի սիոն . և հպարտացաւ 21 կարողութբ իւրով : * Յայնժամ ամ_ բոխեցան սիրտք՝ և ձեռք ինքեանց : և ցաւեցան իբրև կանայք ծննդականք :
22 * Եւ առձայնեցին զՏր ողորմած . և տարածեալ զձեռս իւրեանց ամբար_ ձին յերկինս . և սուրբն Տր Ած լուաւ 23 վաղվաղակի ձայնի նց : * Եւ յիշեաց զմեղս

զմեղս նոցա. և ոչ ետ զնոսա թշնամեաց իւրեանց. այլ փրկեաց զնոսա 'ի ձեռն Եսայեայ սրբոյ մարգարէի։ 24 *Սատակեաց զբանակս Ասորւոց. և սատակեաց զնոսա հրեշտակ Տ՟ն։ 25 *զի արար Եզեկիաս՝ որինչ հաճոյ էր Տ՟ն. և հզօրաբար գնաց 'ի ճանապարհս Դաւթի հօր իւրոյ. զոր պատուիրեաց նմա Եսայիաս մարգարէ մեծ. և հաւատարիմ առաջի Ա՟Յ։ 26 *Յաւուրս նորա դառնալով դարձաւ արեգակն. և վերայաւել արքայի զկեանս։ 27 *Հոգւով մեծաւ ետես զյետինս. և մխիթարեաց զսգաւորս 'ի Սիոն. մինչև յաւիտեան։ 28 *Եցոյց զապառնիս՝ և զթաքուցեալսն նախ քան զերծանելն։

## Գլ. ԽԹ.

1 Յիշատակ Յովսիայ 'ի շարադրութիւն հոտոյ եղեալ անգրագործի։ 2 *Եւ ամենայն բերանում իբրև ըղմեղր քաղցրասցի յիշատակ նորա. և որ երաժիշտ 'ի խրախութեան գինւոյ։ 3 *Ինքն է ուղիղ ածային յապաշխարութիւն ցեղի. և եբարձ զգարշութիւնս ամբարշտութեան. 4 *Եւ ուղղեաց առ Տ՟Ր զսիրտ իւր. և յաւուրս մեղաւորաց զօրեղացոյց զբարեպաշտութիւն։ 5 *Բաց 'ի Դաւթէ. և Եզեկիայէ. և Յովսիայէ՝ ամենեքեան զչարիս առաջ արկին. 6 *Զի թողին զօրէնս բարձրելոյն թագաւորք Իւդի. և արհամարհեցին զերկիւղն Տ՟Ն. 7 *Զի ետուն զթագաւորութիւն իւրեանց օտարաց. և զփառս իւրեանց օտարոտւոյ ցեղի։ 8 *Հրդեհեցին զընտրեալ քաղաքն սրբութեան. և ամայի արարին զճանապարհս նորա ձեռամբ Երեմիայի։ 9 *Զի չարաչար 'ի ձեռն ետուն զնա. որ յարգանդէ մօր նուիրեցաւ մարգարէ. յատակել՝ և խլել. և կորուսանել. և վերստին շինել. և նորոգել։ 10 *Եզեկիէլ որ ետես զտեսութիւն փառաց. զոր եցոյց նմա 'ի կառսն քերովբէականում։ 11 *Զի յիշատակեաց զթշնամիսն տարափաւ, բարերարել նո՟ց, ոյք ուղղեցին զճանապարհս ուղիղս։ 12 *Եւ երկոտասան մարգարէից ոսկերք ստեղծին 'ի տեղւոջէ իւրեանց. զի զօրացուցին զՅակոբ. և ազատեցին զնոսա հաւատով առաքինութեան։ 13 *Զի արդ առաւելացուցուք զԶօրաբաբել. զի և ինքն իբրև զնշան ներ աջու ձեռին։ 14 *այսպէս և զՅեսու զորդի Յովսեդեկեայ. որք յաւուրս իւրեանց կանգնեցին զտունն Տ՟Ն. և բարձրացուցին զտաճարն սուրբ Տ՟Ն. պատրաստեալ 'ի փառս մշտնջենաւորս։ 15 *Եւ Նէեմիաս 'ի յիշատակի բազմի ժամանակի. որ կանգնեաց մեզ զպարիսպս տապալեալս. և կացոյց զդրունս. և զնիգս. որ կանգնեաց զտունս մեր։ 16 *Ոչ ոք է ծնեալ յերկրի իբրև զԵնովք զի և նա յափշտակեցաւ յերկրէ։ 17 *Եւ ոչ որպէս զՅովսէփ. որ ծնաւ մարդ իշխան եղբարց. հաստատութիւն ազգի. կառավար եղբարց. յենարան ժողովրդեան։ 18 *Եւ ոսկերք նորին այցելեալք են. և զկնի մահուն մարգարէացան։ 19 *Սէթ՝ և Սեմ. առ մարդիկս փառաց հասին. և 'ի վերայ ամ՟ի անձին 'ի նախասկսմանէն Ա՟դամայ։

## Գլ. Ծ.

1 Սիմէօն որդի Օնեայ. քահանայ մեծ. որ 'ի կեանս իւր եբարձ ըղտուն. և յաւուրս իւր զօրեղացոյց զտաճարն։ 2 *Եւ տաճարի բարձրութիւն 'ի նմանէ հիմնեցաւ. կրկին շինութիւն և բարձու տաճարին որմունք. 3 *Յաւուրս նորա զեղան ջրհորք. և իբրև զծով առլցան 'ի վեր քան զեզանակ. 4 *Որ հոգացաւ զազգ իւր. և ազատեաց զնա 'ի կորստենէ. 5 *Որ կարողացաւ առաւելացուցանել զքաղաքն. որ առէհաս փառաց յանդրադարձութեան ազգի. և զմուտ տան և սրահի յաճախեցոյց. 6 *Իբրև զաստղ առաւօտու 'ի մէջ միգի. և իբրև զլուսին լրացեալ յաւուրս իւր լուսաւորէ. 7 *Եւ իբրև զարեգակն վերափայլեալ. այսպէս նա փայլեաց 'ի տաճարի Ա՟Յ. 8 *Իբրև զաղեղն ճաճանչեալ 'ի մէջ միգաց փառաց. և իբրև զծաղիկ վարդից յաւուրս գարնայնոյ. և իբրև շուշանն՝ ոյք են 'ի գնացս ջուրց. և իբրև զխունկ բազմաբուրեան յաւուրս ամառան. 9 *Իբրև զհուր փայլատակող. և խունկ այրեցող ներ հրում. 10 *Իբրև զանօթ ոսկւոյ յեռեալ. զարդարեալ ամենայն քարամբ պատուականաւ. 11 *Իբրև զձիթենի ստեղնեալ. և կիպարիսն 'ի բարձրաբերձութիւն զինքն ամբառնող. յառնուլն ինքեան զգահոյս փառաց. և սփածանիլ զնա 'ի կատարումն զօրութեան. 12 *Եւ էլից սեղանոյ սրբոյ. զփառս ետ սրբութեան զիւր եւ արկեալ. 13 *Բայց յառնուլն զբաժինս 'ի ձեռանէ քահանայիցն. և ինքն կացեալ յանդիման սեղանոյն. Եւ շուրջ զնովաւ պսակ եղբարց. իբրու զտունկ եղևնափայտի 'ի լերինն լիբանանու. 14 *Այսպէս շուրջ զնովաւ կային իբրև ոստս արմաւենւոյ. և ամենեքեան որդիք Ահարոնի ներ փառաց

իւրեանց։ *Իսկ մատուցումն Տ՟ն ներ ձեռաց նոքեանց. առաջի ամենայնի ժողովարանի Իղի. և կատարմամբ մատուցեալ ներ սեղանոյն. առաւելացուցանել զմատուցումն Բարձրելոյն Թագաւորին։ *Ձգեաց զձեռն իւր 'ի սպանդ. և Ճաշակեաց յարենէ խաղողոյ։ *Եհեղ ներ հիման սեղանոյն զհոտ զամենայն Բարձրելոյ իշխանին։ *Յայնժամ աղաղակեցին որդիքն ահարոնի. փողք կռածոյք հնչեցին. և լսելի արարին զձայն մեծ 'ի յիշատակ առաջի Ա՟Յ։ *Յայնժամ ամ ժողովուրդն 'ի միասին աճապարեցին. և անկան 'ի վերայ երեսաց յերկիր. երկիր պագանել Տ՟ն Ա՟Յ իւրեանց. և մատուցանել մաղթանս ամենազօրին Ա՟Յ բարձրելոյ։ *Եւ առաւելացուցին սաղմոսերգուքն ձայնիւք իւրեանց. և 'ի մեծի տան արարաւ հնչումն լի համեղուէ։ *Եւ աղաչեաց ժողովուրդն զՏ՟ր Բարձրեալ մաղթանօք. մինչև կատարեցաւ պատիւ Տ՟ն. և զընծայսն զիւրայսն կատարեցին։ *Յայնժամ իջեալ՝ զձեռս իւր 'ի վեր ամբարձ առ ամ ժողովս որդւոց Իղի տալ զփառս Ա՟Յ 'ի շրթանց իւրեանց։ և յանուն նորին պարծիլ։ *և կրկնեաց զաղօթսն իւր. կամելով ցուցանել զզօրութիւն Ա՟Յ։ *Եւ այժմ աղօթեցէք առ ամն ամենեցուն. որ զմեծամեծս արար նա միայնում երկրում. որ աճեցոյց զաւուրս մեր յարգանդէ մօր մերոյ. և արար ընդ մեզ ըստ իւրոյ ողորմութեանն։ *Տացէ մեզ զբերկրութիւն սրտի. և լինել խաղաղութիւն յաւուրս մեր յԻ՟ղլ 'ի ձեռն աւուրց մշտնջենաւորաց։ *Հաւատալ Իղի ընդ մեզ գոլ Ա՟Յ ողորմութեանն. զի փրկեսցէ զմեզ յաւուրս իւր։ *Երկուս ազգս ատեաց անձն իմ. իսկ երրորդն ոչ է ազգ. զոր ատեցեմ։ *Որք նստին 'ի լերինն սէիր. և զփղշտացին. և անմիտ ժողովուրդ՝ որ բնակի ներ սիւքեմացւոց։ *Զուսումն իմաստութեան և մակացութեան գրեաց ներ այսմ Ճիւղում յեսու որդի սիրաքայ Եմացի. որ վերանորոգեաց զիմաստութիւն 'ի սրտէ իւրմէ։ *Երանելի է՝ որ ներ այսոցիկ բարեաց յարամնայ. որ դնէ զսոսա 'ի սրտի իւրում, իմաստուն եղիցի միշտ։ *Զի եթէ զսոսա արասցէ. առ ամենեսեան կեցցէ. զի լոյս Ա՟Յ ընթացահետ է նորա։

(15–31; margin: առ ամենեսեան զօրեսցէ)

## ԳԼ: ԾԱ:

1 Աղօթք յեսուայ որդւոյ սիրաքայ։ Խոստովան եղէց քեզ Տ՟ր Թագաւոր. և յար գովեցից զքեզ զԱ՟Ծ 2 զկեցուցիչդ իմ։ *Խոստովանեցայց անուան քոյ. զի օգնական և պաշտպան 3 ինձ եղեր։ *Եւ ազատեցեր զմարմին իմ 'ի կորստենէ. յորոգայթէ լեզուի անիրաւի. և 'ի շրթանց գործողաց զխաբէութի. և առաջի վերակացուաց ե- 4 ղեր ինձ օգնական։ *Եւ ազատեցեր զիս ըստ բազմութեան ողորմութեան անուան քոյ 'ի գռուողաց պատրաստեցելոց 5 'ի կերակուր։ *Ի ձեռաց յուզողաց զանձն իմ. և 'ի դրանց չարչարանաց. 6 որք շուրջ պատեցան զինև։ *Ի տապնապէ բոցոյ որ շրջապատեաց զիս. և 'ի մէջ հրոյ ոչ եմ տապացեալ։ 7 *Ի խորութենէ որովայնի դժոխոց. և 'ի լեզուէ աղտեղացելոյ. և 'ի բանէ ստութեան. 'ի թագաւորէ անօրինէ. և 8 'ի լեզուէ անիրաւէ։ *Գովեսցէ մին- 9 չև 'ի մահ անձն իմ զՏ՟ր։ *և կեանք իմ մերձեցեալք էին 'ի դժոխս ստո- 10 րինս։ *Շուրջ պատեցան զինև յամենայն ուստեք. և ոչ էր՝ որ օգնէր։ Նայօղ էի առ օգնութի մարդկան. 11 և ոչ էր։ *Յիշեցի զողորմութի քո Տ՟ր. և զգործս քո՝ որք են յաւիտենից։ 12 *Բանզի զերծուցանես զակնկալուս առ քեզ Տ՟ր. և փրկես զնոսա 'ի ձեռաց 13 հեթանոսաց։ *Բարձրացուցեր 'ի վ՟ր երկրի զբնակութի իմ. և վասն մահու 14 վայրհեղանողի պաղատեցի։ *Կոչեցի զՏ՟ր. զՀայր Տ՟ն իմոյ. զի մի՝ 'ի բաց թողցէ զիս յաւուր նեղութեան իմոյ. և 'ի ժամանակի ամբարտաւանից թարց 15 օգնականի։ *Գովեցից զանուն քո զօրհանապազ. և յար գոհացայց զնմանէ խոստովանութբ. և լսելիք եղեն 16 աղօթք իմ։ *Եւ փրկեցեր զիս 'ի կորստենէ. և զերծուցեր զիս 'ի ժամանա- 17 կէ խարդախողէ։ *Վասն այնորիկ խոստովանեցայց և զգովութի մատուցից քեզ. և օրհնեցից զանուն Տ՟ն։ 18 *Մինչ դեռ մանկագոյն էի. մինչ չև մոլորեալ էի. խնդրեցի զիմաստութի բացայայտ ներ աղօթից իմոց։ 19 *Առաջի տաճարին հայցէի վ՟ն նր. և մինչև 'ի վախճանս խուզեցից զնա. և ծաղկեցոյց իբրև նախախայծ խաղող։ 20 *Ներկրեցաւ սիրտ իմ նովաւ. ընթացաւ ոտն իմ՝ զշաւիղ ուղիղ. 'ի մանկութէ իմմէ հետազօտէի զնա։ 21 *Խոնարհեցուցի սակաւ զունկն 22 իմ, և առքարշեցի զնա։ *Զօրով գտի յիս ինքեան զիմաստութիւն. և

և զբազումս զարգացուցի 'ի նմա :
* Տուողին ինձ զիմաստութիւն, տաց 23
զփառս : * Քանզի խորհրդակցեցայ՝ 24
զի արարից զայն . նախանձեցայ բար_
ւոյ՝ և ոչ ամաչեցից : * Ըմբշամարտե_ 25
ցաւ անձն իմ ընդ նմա . և առնելով
զայն հաստատեցայ : * Զձեռս իմ 26
ձգեցի 'ի բարձրն . և զանզգամութիւն
նորա փշրեցի : * Զանձն իմ ուղղե_ 27
ցի առ նա . և 'ի ծանօթութեան գտի
զնա : * Ստացայ ընդ նմա զսիրտ 'ի 28
բնէ . վասն այնորիկ ոչ թողացայց :
* Որովայն իմ ամբոխեալ է խնդրե_ 29
լով զնա . վն այնորիկ զբարի ստացայց
զստացուած : * Ետ ինձ Տէր զլեզու 30
զվարձ իմ . և նովաւ գոհացայց զնմա_
նէ . * Մերձեցարուք առ իս անուսք . 31
և հաւաքեցէք զձեզ 'ի տուն խրատու :

32 * Ընդէր դեռևս վերայամիք . և զինչ
ասէք 'ի սոսա . անձինք ձեր պապաքին կա_
33 րի յոյժ : * Բացի զբերան իմ, և խօ_
սեցայ . համեմատեցէք ընդ ձեզ թարց
34 արծաթոյ : * և զպարանոց ձեր ենթ_
արկէք ընդ լծով : և ընկալցի անձն
ձեր զխրատ : զի ներ մերձաւորում՝ է
35 գտանել զնա :* Տեսէք աչօք ձերովք՝
զի սակաւ աշխատեցայ . և գտի
ինձ զհանգիստ բազում :
36 * Ստացարուք զմնկացութիւն ներ
թուով բազմում արծաթոյ . և զյո
լով զոսկի ստացարուք նովաւ :
37 * Բերկրի անձն ձեր ներ ողորմութե_
նի . և ոչ պատկառէք 'ի գովութենի :
38 * Գործեցէք զգործ ձեր նախ քան ըզ
ժամանակ . և տացէ ձեզ զվարձ ձեր
'ի ժամանակի իւրում :





Եւ առաքեցաւ առ իս մի 'ի սերովբէից անտի․ և 'ի ձեռին իւրում ունէր կայծակն․ զոր առեալ ու՝ նելեօք 'ի սեղանոյն՝ մերձեցոյց․ Եսայ․ 6․ 6․

Այսպէս ասէ Տէր զօրութեանց․ Գնա՛ դու, և մուտ 'ի գիտանն անդր՝ առ Սոմնաս հանդերձապետ․ և ասասջիր դմա․ Եսայ․ 22․ 15․

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ․

Գլուխ Առաջներորդ ։

1 Տեսիլ Եսայեայ որդւոյ Ամովսայ՝ զոր ետես 'ի վր̄ Հրէաստանի՝ և 'ի վր̄ Երուսղ̄մ․ 'Ի թագաւորութեան Ոզիայ՝ և Յովաթամայ՝ և Աքազու՝ և Եզեկիայ․ որք թագաւորեցին Հրէաստանի։



2 ԼՈՒՐ ԵՐԿԻ՛Ն․ և ՈՒՆ՛ԿՆ դիր երկիր․ զի Տր̄ խօսեցաւ․ որդիս ծնայ՝ և բարձրացուցի․ և նոքա զիս անարգեցին։ 3 * Ճանաչէ եզն զստացիչ իւր՝ և էշ զմսուր տեառն իւրոյ․ և իէլ զիս ոչ ծանեաւ․ և ժողովուրդ իմ զիս 'ի միտ ոչ էառ։ 4 * Վա՜յ ազգի մեղաւորի․ ժողովուրդ՝ որ լի է մեղօք․ սերմն ժանտ․ որդիք անօրէնք․ թողին զՏր̄․ և բարկացուցին զսր̄ն Իսրայէլի․ օտարացան՝ և յետս կացին։ 5 * Զի՞ ևս յաւելուք վէրս յանօրէնութիւն․ ամ̄ գլուխ 'ի ցաւս․ և ամ̄ սիրտ 'ի տրտմութիւն։ 6 * Յոտից մինչև ցգլուխ չիք 'ի նմա առողջութի․ վէրք․ այտուցք․ և հարուածք խլխայթեալք․ չի՛ք սպեղանի 'ի վր̄ դնել․ ոչ ձէթ՝ և ոչ պատանս։ 7 * Երկիրն ձեր աւերակ․ քաղաքք ձեր հրձիգք․ զաշխարհ ձեր առաջի ձեր օտարք կերիցեն․ աւերեալ և կործանեալ յազգաց օտարաց։ (5․ 6․) 8 * Լքեալ թողցի դուստր սիոնի իբրև զտաղաւար յայգւոջ․ և իբրև զհովանի մրգապահաց 'ի մէջ սեղխենեաց․ և որպէս զքաղաք պաշարեալ։ 9 * Եւ եթէ ոչ Տն̄ զօրութեանց թողեալ էր մեզ զաւակ․ իբրև զսոդոմ լինէաք․ և գոմորայ նմանէաք։ (Հռովմ․ 9․ 29․ Ծննդ․ 19․ 24․) 10 * Լուարուք զբան Տն̄ իշխանք սոդոմայեցւոց․ ունկն դիք օրինաց Այ̄ ժողովուրդք գոմորայեցւոց։

* Զի՞

11 *Ո՞ւր կայ իմ՝ և յաճախելոյ զոհից ձերոց՝ ասէ Տր̃. յագեալ եմ ողջակիզօք խոյոց ձերոց. և զճարպ գառանց՝ և զարիւն ցլուց և նոխազաց ոչ կամիմ: 12 *Եւ ո՞չ թէ գայցէք յանդիման լինել ինձ. ո՞ խնդրեաց զայդ 'ի ձեռաց ձերոց: կոխել զգաւիթս իմ մի՛ յաճախիցէք: 13 *Եթէ մատուցանիցէք ինձ նաշիհ, զուր է: խունկք ձեր պիղծք են ինձ. զգլուխս ամսոց ձերոց. և զշաբաթս և զօրն մեծ ոչ առնումյանձն: 14 *Զպահս՝ և զդատարկութիւն՝ և զամսագլուխս ձեր և զտօնս ձեր ատեաց անձն իմ: յագեալ եմ ձեօք. ոչ ևս ներեցից մեղաց ձերոց: 15 *Յորժամ համբառնայցէք զձեռս ձեր՝ դարձուցից զերեսս իմ 'ի ձէնջ: և եթէ յաճախիցէք յաղօթս՝ ոչ լուայց. զի ձեռք ձեր լի են արեամբ: 16 *Լուացարո՛ւք՝ սրբեցարո՛ւք. ընկեցէ՛ք զչարիս ձեր յանձանց ձերոց առաջի աչաց իմոց: դադարեցէ՛ք 'ի չարեաց ձերոց: 17 *Ուսարո՛ւք զբարիս գործել: խնդրեցէ՛ք զիրաւունս. փրկեցէ՛ք զզրկեալն. դա՛տ արարէք որբոյն. և տո՛ւք իրաւունս այրւոյն: 18 *Եւ եկայք խօսեցարուք ընդդիմեանս՝ ասէ Տր̃. և եթէ իցեն մեղք ձեր իբրև զձանձախարիթ՝ իբրև զձիւն սպիտակ արարից. և եթէ իցեն իբրև զորդան կարմիր՝ որ̃պ զասր ս̃պ արարից: 19 *Եւ եթէ ախորժեսջի՛ք՝ և լուիջի՛ք ինձ. զբարութիւս երկրի կերիջի՛ք: 20 *Ապա եթէ ոչ կամիցիք լսել ինձ. սուր կերիցէ զձեզ. քանզի բերան Տն̃ խօսեցաւ զայս: 21 *Ո՞րպէս եղև պոռնիկ՝ քաղաքն հաւատարիմ սիօն. լի հաւատովք. յորում արդարութի̃ հանգուցեալ էր. և արդ սպանօղք են: 22 *Արծաթ ձեր անփորձ. վաճառականք ձեր խառնեն զջուր ընդ գինի: 23 *Իշխանք ձեր ապստամբք. դողակիցք են գողոց. սիրեն զկաշառս. վրիժագործք. որբոց իրաւունս ո՛չ առնեն. և դատաստանի այրեաց ունկն ո՛չ դնեն: 24 *Վա՛յ այդորիկ այսո̃պ ասէ Տր̃ Տէր զօրութե̃ց հզօրն Իէլի: վա՛յ ձեզ հզօրքդ Իէլի. զի ոչ ևս դադարեսցէ բարկութի̃ իմ 'ի հակառակորդաց իմոց. և դատաստանօք դատեցայց զթշնամիս իմ: 25 *Եւ արկից զձեռն իմ 'ի վր̃ քո. և ածից քեզ զեռանդն 'ի սրբութի̃ ապստամբեացդ. և զապստամբսն կորուսից. և բարձից 'իքէն զա̃մ անօրէնս: 26 *Եւ կացուցից 'ի վերայ քո դատաւորս իբրև զառաջինն. և զխորհրդականս քո ո̃պ 'ի սկզբանէն: և ապա կոչեսջիր դու քաղաք արդարութեան՝ մայր քաղաքաց հաւատարիմ սիօն: 27 *Ո՛ր իրաւամբք և ողորմութե̃ փրկես 28 ցին գերիք քո: *Եւ խորտակեսցին անօրէնք և մեղաւորք 'ի միասին. և որք թողին զՏր̃, վախճանեսցին 'ի միասին: 29 *Վասնզի արդ ամաչեսցեն 'ի կուռս իւրե̃ց ընդորս ինքեանք հաճեալ էին. և զգեցցին զամօթ 'ի դրօշեալս իւրե̃ց. զորս ինքեանք արարին: և ամաչեսցեն 'ի պարտէզս իւրեանց՝ որոց ցանկա- 30 ցանն: *Զի եղիցին իբրև զբևեկնի թերևաթափ: և իբրև զդրախտ՝ որոյ 31 ոչ գուցէ ջուր: *Եւ եղիցի զօրութի̃ նոցա իբրև զծեծած վշոյ. և գործք նոցա իբրև զկայծակունս հրոյ՝ և այրեսցին անօրէնք և մեղաւորք 'ի միասին. և ոչ ո՛ք իցէ՝ որ շիջուցանիցէ:

## Գ Լ: Բ:

1 Բանն որ եղև առ Եսայի Որդի Ամովսայ 'ի վր̃ հրէաստանի և 'ի վր̃ Երուսաղէմ:

2 Զի եղիցի յաւուրս յետինս յայտ նի լեառն Տն̃. և տուն Այ̃ 'ի վր̃ գլխոյ լերանց. և բարձրասցի 'ի վր̃ բլրոց. և եկեսցեն 'ի նա ա̃մ հեթա 3 նոսք: *Եւ երթիցեն ժողովուրդք բազումք. և ասասցեն: եկա՛յք՝ երթի ցուք 'ի լեառն Տն̃ և 'ի տուն Այ̃ յակո բայ. և պատմեսցէ մեզ զճանապարհս իւր՝ և գնասցուք ընդ նա: զի 'ի սիօնէ ելցեն օրէնք. և բան Տն̃ յե̃ղմէ: 4 *Եւ դատեսցէ 'ի մէջ հեթանոսաց. և յանդիմանեսցէ զժողովուրդս բազումս: և ձուլեսցեն զսուսերս իւրե̃ց 'ի խոփս. և զսուինս իւրե̃ց 'ի մանգաղս. և ո՛չ առնուցու ազգ յազգի վր̃ սուր. և ո՛չ ևս ուսանիցին տալ պատերազմ: 5 *Եւ արդ դու տուն յակոբայ՝ եկա՛յք՝ 6 երթիցուք 'ի լոյս Տն̃: *Վասնզի եթող զժողովուրդ իւր՝ զտունն յակոբայ. զի լցաւ իբրև զառաջինն աշխարհ նոցա հմայիւք՝ իբրև զայլազգեաց. և որդիք բազումք այլազգիք ծնան նոցա: 7 *Լցաւ աշխարհ նց̃ ոսկւով և արծաթով. և ո՛չ էր թի՛ւ գանձուց նոցա. լցաւ երկիր նոցա երիվարօք՝ և ո՛չ էր 8 թի՛ւ կառաց նոցա: *Լցաւ երկիր նց̃ գարշելեօք գործոց ձեռաց իւրեանց. և երկիրպագին՝ որոց արարին մա 9 տունք նոցա. *Խոնարհեցաւ մարդ. և յերկիր կործանեցաւ այր. և ո՛չ ներե 10 ցից նց̃: *Եւ արդ երթա՛յք՝ և մտէ՛ք ընդ վիմօք՝ և թաքերո՛ւք յերկրի յերե սաց ահի Տն̃. և 'ի փառաց զօրութե̃ նր̃. յորժամ յարիցէ վանել զերկիր: 11 *Զի աչք Տն̃ բարձունք են. և մարդ տառապեալ. և խոնարհեսցի բարձրութի̃ մարդկան. և բարձրասցի Տր̃ միայն 12 յաւուր յայնմիկ: *Զի օր Տն̃ զօրութե̃ց

Margin notes: Յերեմ. 6.20. Ամովս. 5.22. — Եսայ. 59. 3. — 1. Պետ. 3. 11. — խօսե ցարուք — Երեմ. 5.28. — Միք. 4. 1.

թեց 'ի վր ամ հպարտից՝ և ամբարտաւանից. և 'ի վր ամ բարձրացելոց, և վերացելոց, և խոնարհեսցին ։
13 *Եւ 'ի վերայ ամ մայրից լիբանանու բարձրացելոց՝ և վերացելոց. և 'ի վր ամ ծառոց կաղնեաց բասանու ։
14 *Եւ 'ի վր ամ լերանց բարձանց. և 'ի 15 վր ամ բլրոց բարձրացելոց. *Եւ 'ի վր ամ աշտարակաց բարձրացելոց. և 'ի վր ամ պարսպաց բարձրացելոց ։
16 *Եւ 'ի վր ամ նաւուց ծովու ։ և 'ի վր ամ հանդիսի գեղեցկութե նաւուց ։
17 *Եւ խոնարհեսցի ամ մարդ. և անկցի հպարտութի մարդկան. և բարձրասցի 18 Տր միայն յաւուր յայնմիկ ։ *Եւ զձեռագործսն իւրեանց զամ տարցին ։
19 *Թաքուսցեն յայրս և 'ի ծերպս վիմաց՝ և 'ի սորս երկրի. յերեսաց ահի Տն, և 'ի փառաց զօրութե նր. յորժամ յարիցէ վանել զերկիր ։ 20 *Զի յաւուր յայնմիկ հանցէ մարդ զգարշելիս իւր՝ զարծաթեղէնս՝ և զոսկեղէնս՝ զորս արարին երկիրպագանել ունայնեաց և չղջիկանաց ։ 21 *Մտանել 'ի ծակս վիմի հաստատնոյ՝ և 'ի ծերպս վիմաց յերեսաց ահի Տն և 'ի փառաց զօրութեան նր. յորժամ յարիցէ վանել զերկիր ։
22 *Դուլ ձեզ 'ի մարդոյն՝ յորում գոյ շունչ յռնգունս նորա. զի ընդ ում ումեք համարեսցի նա ։

Ովսէ. 10.8. Ղուկ. 23.30. Յայտ. 6.16.

## ԳԼ ։ Գ ։

Ահաւասիկ Տր Տր զօրութեց բարձցէ 'ի հրէաստանէ և յԵմէ զայր հզօր՝ և զկին զօրաւոր. զզօրու հացի՝ և զզօրութի ջրոյ ։ 2 *Զհսկայն, և զզօրաւորն. և զայր պատերազմող՝ և զդատաւոր՝ և զմարգարէ՝ և զքննիչ՝ և զծերս ։ 3 *Եւ զյիսնապետ՝ և զսքանչելին խորհրդական. և զիմաստուն ճարտարապետ. և զհանճարեղն ունկնդիր ։
4 *Եւ կացուցից 'ի վր նոցա մանկունս իշխանս. և խաբեբայք տիրեսցեն նց ։
5 *Եւ անկցի ժողովուրդն՝ այր ը այր. և այր ընդ ընկերի իւրում. ընդ հարցի մանուկն ընդ ծերոյն. և անարգն ընդ պատուականին ։ 6 *Զի բուռն հարկանիցէ այր զեղբօրէ իւրմէ. կամ զընտանւոյ հօր իւրոյ. և ասիցէ՝ հանդերձք գոն քո՝ լեր մեր իշխան. և կերակուր մեր ընդ քեզ լիցի ։ 7 *Տացէ պատասխանի յաւուր յայնմիկ՝ և ասիցէ. ոչ եղեց ձեզ իշխան. զի ոչ գոյ 'ի տան իմում հաց՝ և ոչ հանդերձ. և ոչ եղեց իշխան ժողովրդեանս այսմիկ ։ 8 *Զի լքաւ եէմ. և հրէաստան կործանեցաւ. և լեզուք նոցա անօրէնութբ 'ի Տէ ապստամբեցան ։ 9 *Ազ որոյ խոնարհեցան փառք նց. և ամօթ երեսաց նոցա ծածկեաց զնոսա. և զմեղս իւրեանց իբրև զսոդոմացւոյն պատմեցին՝ և յայտ արարին. վայ անձանց նոցա. զի խորհեցան զխորհուրդ չար առ անձինն ։
10 *Եւ ասեն՝ կապեսցուք զարդարն՝ զի դժպհի եղև մեզ. այսուհետև զարդիւնս գործոց իւրեանց կերիցեն ։
11 *Վայ անօրինին. չարիք ըստ գործոց 12 ձեռաց իւրոց անցցեն ընդ նա ։ *Ժողովուրդ իմ. հարկահանք ձեր ճռաքաղ առնեն զձեզ. և պահանջօղք տիրեն ձեզ. ժողովուրդ իմ, որք երանեն ձեզ՝ խաբեն զձեզ. և զշաւիղս ոտից ձերոց խռովեցուցանեն ։ 13 *Այլ արդ հասցէ Տր 'ի դատաստան. և կացուսցէ յատենի զժողովուրդ իւր ։ 14 *Ինքնին Տր 'ի դատ եկեսցէ, ընդ ծերս ժողովրդեան իւրոյ՝ և ընդ իշխանս նց. դուք զի՞ հրկէզ արարէք զայգի իմ. և յափշտակութի տնանկին է 'ի տունս ձեր ։
15 *Դուք զի՞ զրկէք զժողովուրդ իմ. և զերեսս տնանկաց լի՞ առնէք ամօթով՝ 16 ասէ Տր՝ Տր զօրութեց ։ *Այսպէս ասէ Տր. փոխանակ զի հպարտացան դստերք սիօնի. և գնացին 'ի բարձր պարանոց. յօնօք ակնարկէին. և 'ի գնացս իւրեանց քարշէին զստորոտս իւրեանց. և ոտիւք կաքաւէին ։
17 *Եւ խոնարհեցուսցէ Ած զիշխանս դստեր սիօնի. և մերկասցէ Տր զզարդ 18 նոցա ։ *Յաւուր յայնմիկ հանցէ Տր զփառս հանդերձից նոցա. և զպաճուճանս նոցա. 19 *Եւ զհիւսս. և զծամակալս. 20 և զպսակակալս ։ *Եւ զմահիկս. և զզարդ երեսաց նց. և զպաճուճանս զարդու փառաց նոցա. և զքօղէս. և զապարանջանս. և զմեհեւանդս. և 21 զգինդս ։ *Եւ զմատանիս. և զկշտապանակս նց. զդիպակս՝ և զճեղենակս 22 *Զեզրածիրանիսն. և զմիջնածիրանիսն. զառատնին արկանելիս. և զերևելի 23 լախնացին ։ *Զբեհեզն. և զերկնագոյնն. և զկարմիր շղաշատեան. և զճամկաւորն. զոսկեճամուկն. զոսկէ 24 տոտունն ։ *Եւ եղիցի փոխանակ հոտոյն անուշից փոշի. և փոխանակ կամարացն չուան գօտի. և փոխանակ ոսկի զարդու գլխոյն կնտութի վն գործոց քոց. և փոխանակ ոսկեհուռ դի25 պակին քուրձ զգեցցիս ։ *Եւ որդիդ քո գեղեցիկ զոր սիրես՝ սրով մեռցի. 26 և իշխանք ձեր սրով անկցին ։ *Եւ թշուառասցին, և սուգ զգեցցին սապատք զարդուց ձերոց. և մնասցիր միայն. և յերկիր կործանեսցիր ։

## Գլ. Դ.

1 Եւ բուռն հարկանիցեն եօթն կին զառնէ միոջէ՝ և ասիցեն. հաց զմեր կերիցուք. և հանդերձ զմեր զգեցցուք. բայց միայն անուն քո կոչեսցի ի վերայ մեր. բարձ ի մէնջ զնախատինս մեր։ 2 Յաւուր յայնմիկ ծագեսցի Աստուած խորհրդովք՝ և փառօք ի վերայ երկրի. բարձրացուցանել՝ և փառաւոր առնել զմնացորդս Իսրայէլի։ 3 Եւ մնացորդք Սիոնի. և մնացորդք Երուսաղէմի սուրբ կոչեսցին. ամենեքեան որք գրեցան յԵրուսաղէմ ի կեանս։ 4 Զի լուասցէ Տէր զաղտն ուստերաց Սիոնի. և զարիւնն ի բաց սրբեսցէ ի միջոյ նորա. հոգւով դատաստանաց. և հոգւով այրման։ 5 Եւ եկեսցէ, և եղիցի ամենայն տեղի լերինն Սիոնի. և ամենայն որ շուրջ զնովաւ իցէ հովանի ամպոյ ի տուէ. և իբրև զծուխ, և զլոյս հրոյ բորբոքելոյ ի գիշերի. ամենայն փառօք ծածկեսցի։ 6 Եւ հովանի ի տօթոյ. և յարկ ծածկութեան ի խստութենէ, և յանձրևոյ։

## Գլ. Ե.

1 Երգեցից սիրեցելոյ այգւոյ իմոյ երգս սիրեցելոյ նորա։

Երեմ. 2.21. Մատթ. 21. 33.

Այգի եղև սիրեցելոյն յանկեան ի տեղւոջ պարարտութեան։ 2 Ցանգով փակեցի՝ ձողաբարձ զարդարեցի՝ և տնկեցի որթ սորեկ. աշտարակ շինեցի ի միջի նորա. և գուբ հնձան փորեցի ի նմա. և մնացի, զի բերցէ ինձ խաղող. և եբեր փուշ։ 3 Եւ այժմ արք Յուդայ և բնակիչք Երուսաղէմի. դատ արարէք ընդ իս և ընդ այգի իմ։ 4 Զի՞նչ ինչ առնել էր այգւոյ իմոյ՝ և ես ոչ արարի նմա. մնացի, զի բերցէ խաղող՝ և եբեր փուշ։ 5 Եւ արդ ես ինձէն պատմեցից՝ զինչ արարից ընդ այգի իմ. քակեցից զցանգ նորա, և եղիցի յափշտակութիւն. կործանեցից զպարիսպ նորա, և եղիցի ի կոխումն։ 6 Եւ թողից զայգի իմ. և մի յատասցի. և մի բրեսցի. և բուսցի ի նմա փուշ իբրև ի խոպանի. և պատուէր տաց ամպոց իմոց. զի մի տեղասցեն յայգի իմ։ 7 Զի այգի Տեառն զօրութեանց տունն Իսրայէլի է. և մարդն Յուդայ նորատունկ սիրելի. մնացի, զի արասցէ իրաւունս՝ և արար զանիրաւութիւն և ոչ զարդարութիւն, այլ աղաղակ։ 8 Վայ այնոցիկ՝ որք յարեն զտուն ի տուն. և զագարակ առ ագարակ մերձեցուցանեն՝ զի զընկերին հանիցեն. միթէ միայն բնակելոց իցէք յերկրի։ 9 Նա աւանիկ ազդ եղև յականջս Տեառն զօրութեանց այդ ամենայն. զի թէ եղիցին տունք բազումք, ասակայն յաւեր դարձցին. և եթէ մեծամեծք և գեղեցիկք իցեն. ոչ ոք իցէ՝ որ բնակեսցի ի նոսա։ 10 Զի ուր գործեսցեն տասն լուծք եզանց. եղիցի անդաստափոր մի. և որ սերմանիցէ արդուս վեց. ժողովեսցէ գրիւս երիս։

11 Վայ այնոցիկ՝ ոյք յառնեն ընդ առաւօտս՝ և զհետ լինին ցքւոյն. որք երեկանան ի նմին. զի գինին անդէն իսկ զնոսին այրէ։ 12 Փողով՝ և թմբկաւ՝ և քնարաւ. և երգովք զգինին ըմպեն. և ի գործս Տեառն ոչ հային. և զգործս ձեռաց նորա ոչ առնուն ի միտ։ 13 Այսուհետև ի գերութիւն մատնեսցի ժողովուրդ իմ վասն ոչ ճանաչելոյ նորա զՏէր. և բազում եղեն դիակունք նորա. վասն սովու հացի և ծարաւոյ ջրոյ։ 14 Եւ լայնեցին դժոխք զանձինս իւրեանց. և բացին զբերանս իւրեանց՝ զի մի դադարեսցեն. և իջցեն փառաւորք՝ և մեծամեծք՝ և մեծատունք՝ և ժանտագործք նորա, զուարճացեալքն ի նմա։ 15 Եւ խոնարհեսցի մարդ. և անարգեսցի այր. և աչք ամբարտաւանք խոնարհեսցին։ 16 Եւ բարձրասցի Տէր զօրութեանց իրաւամբք. և սուրբն Աստուած փառաւորեսցի արդարութեամբ։ 17 Եւ արածեսցին յափշտակեալքն իբրև ցուլք. և զաւերակս մնացելոցն գառինք կերիցեն։ 18 Վայ այնոցիկ՝ ոյք ձգեն զմեղս իւրեանց իբրև երկայն պարանաւ. և իբրև լծոյ երինջոյ զանօրէնութիւնս։ 19 Որք ասեն՝ թէ վաղվաղակի մերձեսցի՝ զոր առնելոց իցէ՝ զի տեսցուք. և եկեսցէ խորհուրդ սրբոյն Իսրայէլի, զի գիտասցուք։ 20 Վայ այնոցիկ՝ ոյք ասիցեն զչարն բարի. և զբարին չար. ոյք դնիցեն զլոյսն խաւար. և զխաւարն լոյս. ոյք դնիցեն զդառն քաղցր. և զքաղցր դառն։

21 Վայ այնոցիկ՝ որք զանձինս առ իմաստունս ունիցին. և յաչս անձանց իւրեանց խորհրդականք։ (Առակ. 3. 7. Հռովմ. 12.16.) 22 Վայ հզօրացդ ձերոց. որք ըմպեն զգինին. և իշխանայդ՝ որք խառնեն զցքին։

23 Որք արդարացուցանեն զամպարիշտն վասն կաշառոց. և զիրաւունս գողանան զարդարոյն։ 24 Վասն այնորիկ որպէս վառի եղէգն ի կայծականց հրոյ, այնպէս այրեսցին ի բորբոքելոյ բոցոյ. արմատ նոցա իբրև զմղեղ եղիցի. և ծաղիկ նոցա իբրև զփոշի ելանիցէ. զի ոչ կամեցան զօրէնս Տեառն զօրութեանց. այլ և գրգռեցին եւս զբանս սրբոյն Իսրայէլի։ 25 Եւ բարկացաւ սրտմտութիւն Տեառն զօրութեանց ի վերայ ժողովրդեան իւրոյ. և էարկ զձեռն իւր ի վերայ նոցա՝ և սատակեաց զնոսա։

առնել էր

զնս. բարկացաւ 'ի վր լերանց՝ եւ եղեն դիակունք նց իբրեւ աղբ զճանապարհաւ: եւ 'ի վր այսր ամի ոչ դարձաւ սրտմտութի նր. այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է: 26 * Այսուհետեւ ամբարձցէ նշանս յազգս հեռաւորս. եւ ածցէ զնոսա 'ի ծագաց երկրի. եւ ահա վաղվաղակի արագս ընթասցին. եւ թեթեւս հասանիցեն: 27 * Ոչ քաղցիցեն. եւ ոչ նիրհեսցեն. եւ ոչ վաստակեսցեն. եւ ոչ ննջեսցեն. եւ ոչ լուծցեն զգօտիս 'ի միջոյ իւրեանց. եւ ոչ հատցին խրացք կօշկաց նոցա: 28 * Որոց նետք իւրեանց սրեալք են. եւ աղեղունք լարեալք: սմբակք երիվարաց նց իբրեւ զվէմ հաստատուն համարեցան: անիւք կառաց նոցա իբրեւ զմրրիկ: 29 * Դիմեսցեն իբրեւ զառիւծունս. եւ հասցին որպէս կորիւնս առիւծուց. գոչեսցեն՝ յարձակեսցին. եւ հասցին գազանաբար. եւ ոչ ոք իցէ՝ որ փրկիցէ զնս: 30 * Աղաղակ արասցէ վն նոցա յաւուր յայնմիկ իբրեւ զձայն ծովու ամբոխելոյ ալեօք. հայեսցին յերկինս 'ի վեր՝ եւ յերկիր 'ի խոնարհ. եւ ահա խաւար խստութե 'ի տարակուսանս նոցա:

## Գլ: Զ:

1 Եւ եղեւ յամին յորում մեռաւ Ոզիա արքայ. տեսի զՏր նստեալ յաթոռ բարձրում եւ վերացելոյ. եւ լի էր տունն փառօք: 2 * Եւ սերովբէք կային շուրջ զնովաւ. վեց թեւք միոյ՝ եւ վեց թեւք միոյ. երկուքն ծածկէին զերեսս իւրն. եւ երկուքն ծածկէին զոտս իւրեանց. եւ երկուքն թռուցեալք: 3 * Աղաղակէին մի առ մի եւ ասէին. ‖ սբ՛ սբ՛ սբ՛. Տր զօրութեց՝ լի է ամ երկիր փառօք նր: 4 * Եւ վերացաւ դրանդն 'ի ձայնէն՝ զոր աղաղակէին. եւ տունն լի եղեւ ծխով: 5 * Եւ ասեմ, վա՜յ է ինձ՝ ես այր տառապեալ՝ զի՞արդ կամս հիացեալ: զի մարդ եմ՝ եւ պիղծ շրթունս ունիմ: եւ 'ի մէջ պղծաշուրթն ժողովրդեան բնակեալ եմ ես. եւ զՏէր զօրութեց տեսի աչօք իմովք: 6 * Եւ առաքեցաւ առ իս մի 'ի սերովբէից անտի. եւ 'ի ձեռին իւրում ունէր զկայծակն. զոր առեալ ունելեօք 'ի սեղանոյն եբեր: 7 * Մերձեցոյց 'ի բերան իմ, եւ ասէ. ահաւասիկ մերձեցաւ այդ 'ի շրթունս քո. եւ հանցէ զանօրէնութիս քո. եւ զմեղս քո սրբեսցէ 'ի քէն: 8 * Եւ լուայ զբարբառ Տն որ ասէր. զո՞ առաքեցից. եւ կամ ո՞ երթիցէ առ այն ժողովուրդ: եւ ասեմ, ահաւասիկ եմ՝ առաքեա՛ զիս: 9 * Եւ ասէ. երթ՝ եւ ասա՛ ցժողովուրդն յայն. ‖ լսելով լուիջիք՝ եւ մի՛ իմասջիք. եւ տեսանելով տեսջիք, եւ մի՛ գիտասջիք: 10 * Զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանդ այդորիկ. եւ ականջօք իւրեանց ծանուս լուա՛ն. եւ զաչս իւրեանց կափուցին: զի մի՛ երբեք տեսանիցեն աչօք. եւ լուիցեն ականջօք. եւ իմանայցեն սրտիւք. եւ դառնայցեն՝ եւ բժշկեցից զնոսա: 11 * Եւ ասեմ. մինչեւ յե՞րբ Տր: եւ ասէ՝ մինչեւ աւերեսցին քաղաքք 'ի բնակչաց. եւ տունք առ 'ի չգոյէ մարդկան. եւ մնասցէ երկիրդ աւերակ: 12 * Եւ յետ այնորիկ յերկարեսցէ Ած մարդկան. եւ բազմասցին մնացեալք յերկրի: 13 * Սակայն եւ 'ի նմանէ տասանորդեսցեն: եւ դարձեալ եղիցին 'ի գերութի եւ յափշտակութիւն. իբրեւ զբեւեկնի. եւ զկաղին թօթափեալ յիւրաքանչիւր պատենից. զաւակ սբ արձանութի նորա:

‖ Յայտ. 4. 8.

‖ Մատ. 13. 14. Մարկ. 4. 12. Ղուկ. 8. 10. Յովհ. 12. 40. Գործ. 28. 26. Հռովմ. 11. 8.

## Գլ: Է:

1 Եւ ‖ եղեւ յաւուրս Աքազու Յովաթամայ որդւոյ Ոզիայ՝ թագաւորին Հրէաստանի. ել Հռասիմ՝ արքայ Արամայ. եւ Փակէէ որդի Ռոմելեայ արքայի Իսրլի 'ի վր Եէմի. տալ ընդ նմա պատերազմ: եւ ո՛չ կարացին պաշարել զնա: 2 * Եւ ազդ եղեւ 'ի տուն Դաւթի՝ եւ ասէ. միաբանեցաւ Արամ ընդ Եփրեմայ. եւ զարհուրեցաւ անձն նորա. եւ անձն ժողովրդեան նորա. զոր օրինակ շարժիցի յանտառի ծառ 'ի հողմոյ: 3 * Եւ ասէ Տր ցԵսայի. ե՛լ ընդ առաջ Աքազու. դու եւ մնացեալ որդին քո Յասուբ. հանդէպ աւազանին վերնոյ ճանապարհին ագարակին թափչի: 4 * Եւ ասասցես ցնա. զգո՛յշ լեր. հանդարտեա՛ց՝ եւ մի՛ երկնչիր՝ եւ մի՛ զարհուրեսցի անձն քո յերկուց փայտից խանձողաց ծխելոց. (զի յորժամ հասանիցի բարկութի սրտմտութե իմոյ. դարձեալ բժշկեցից.) եւ որդին Արամայ՝ 5 եւ որդին Ռոմելեայ: * Զի խորհեցան խորհուրդ չար. Եփրեմ. եւ որդին Ռոմելեայ զքէն՝ եւ ասեն: 6 * Ելցո՛ւք 'ի Հրէաստան՝ խօսեսցո՛ւք ընդ նոսա. դարձուսցո՛ւք զնս առ մեզ: եւ կացուսցո՛ւք նոցա թագաւոր զորդին Տաբելայ: 7 * Այսպէս ասէ Տր զօրութեց. մի՛ կացցէ 8 խորհուրդն այն. եւ մի՛ եղիցի: * Այլ գլուխ Արամայ Դամասկոս. եւ գլուխ Դամասկոսի Հռասիմ: եւ այլեւս վաթսուն եւ եօթն ամ: եւ ապա պակասեսցի թագաւորութիւն Եփրեմայ 'ի ժողովրդենէ անտի: 9 * Եւ գլուխ Եփրեմայ Սամարիա. եւ գլուխ Սամարիոյ որդին Ռոմելեայ: եւ եթէ ո՛չ հաւատայցէք. 10 եւ ո՛չ 'ի միտ առնուցուք: * Եւ յաւել Տր

‖ 4 Թագ. 16. 5.

65 ամ

Տր խօսել ընդ Աքազու՝ և ասէ: 11 * Խնդրեա դու քեզ նշան 'ի Տէ Այ քումմէ 'ի խորութենէ կամ 'ի բարձրութենէ: 12 * Եւ ասէ Աքազ. ոչ խնդրեցից և ոչ փորձեցից զՏր: 13 * Եւ ասէ. արդ լուարուք տուն Դաւթի. թեթև ինչ թուիցի ձեզ վաստակս հասուցանել մարդկան. և զիարդ հասուցանէք վաստակ Տն: 14 * Վասն այդորիկ տացէ ձեզ Տէր ինքնին նշան: Ահա կոյս յղասցի և ծնցի որդի. և կոչեսցեն զանուն նր Էմմանուէլ: 15 * Իւղ և մեղր կերիցէ. մինչև ինչ իցէ ծանուցեալ նր. կամ ախորժեալ յառաջագոյն զչարութի, ընտրեսցէ զբարին: 16 * Զի այնորիկ մինչչև ծանուցեալ իցէ մանկանն զբարի կամ զչար. անարգեսցէ զչարն՝ և ընտրեսցէ զբարին: և մնասցէ երկիրդ՝ յորմէ դուդ կասկածես յերեսաց երկուց թագաւորացն: 17 * Այլ ածցէ Ած 'ի վր քո. և 'ի վր ժողովրդեան քոյ. և 'ի վր տան հօր քոյ. աւուրս՝ որք չև ևս են եկեալ՝ յորմէ օրէ եհան եփրեմ 'ի հրէաստանէ զարքայն ասորեստանեայց: 18 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ շարժեսցէ Տր զճանճիւն՝ որ տիրեսցէ յայնկոյս գետոյն եգիպտացւոց. և զձիաստացն՝ որ է յերկրին ասորեստանեայց: 19 * Եւ եկեսցեն ամենեքեան, և հանգիցեն 'ի ձորս երկրիդ՝ և 'ի ծերպս վիմաց. և յայրս՝ և յամենայն փապարս. և յամենայն փայտս: 20 * Յաւուր յայնմիկ գերծցէ Տր սրովն մեծաւ և որբեցելով. որ է յայնկոյս գետոյն թագաւորին ասորեստանեայց զգլուխ և զմազ ոտից՝ և զմօրուսն սրբեսցէ: 21 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ բուծցէ մարդ երինջ մի յարջառոց. և մաքիս երկուս: 22 * Եւ եղիցի 'ի բազմութենէ կաթինն՝ կերիցէ իւղ. զի իւղ և մեղր կերիցէ ամենայն՝ որ մնացեալ իցէ յերկրին: 23 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ. եղիցի ամ տեղի՝ ուր իցէ հազար որթ հազար կշռոյ սկեղ. խոպանասցի՝ և 'ի փուշ դարձցի: 24 * Նետօք և աղեղնաւորք մտանիցեն անդր. զի խոպանացեալ և փշաբեր եղիցի ամ երկիր: 25 * Եւ ամ լեառն արօրադիր ակօսաբեկ լիցի. և մի հասցի անդ երկիւղ՝ զի եղիցի 'ի խոպանէն և 'ի փշոյն յարօտ զուարին և 'ի կոխան եզին:

Մատ. 1. 23. Ղուկ. 1. 31.

Նորբե_ ցել

## ԳԼ: Ը:

1 Եւ ասէ ցիս Տր. առ դու քեզ տոմս մի նոր մեծ: և գրեսցես 'ի նմա գրչաւ առն ճարտարի՝ արագ արագ զաւար հարկանել՝ և վաղվաղակի զապուռ ժողովել՝ զի հասեալ է: 2 * Եւ վկայս կացուսցես ինձ արս հաւատարիմս. զուրիայ քահանայ՝ և զզաքարիա որդի բարաքեայ: 3 * Եւ մերձեցայ առ կինն իմ մարգարէ. և յղացաւ՝ և ծնաւ որդի. և ասէ ցիս Տր. կոչեա զանուն նր արագ արագ կապտեսջիր՝ և վաղ վաղակի աւար հարկանիջիր: 4 * Զանզի մինչև ծանուցեալ իցէ մանկանն կոչել զհայր կամ զմայր՝ առցէ զզօրութի դամասկոսի՝ և զաւար սամարեայ յանդիման թագաւորին ասորեստանեայց: 5 * Եւ յաւել ևս խօսել ընդ իս Տր՝ և ասէ: 6 * Փոխանակ զի ոչ ախորժեաց ժողովուրդդ այդ զջուրն սիլովայ՝ որ գնայ խաղաղ. այլ կամեցան ունել իւրեանց թագաւոր զհռասիմ, 7 զորդին ռոմելայ: * Վասն այնորիկ ահաւադիկ ածցէ Տր 'ի վր ձեր զջուր գետոյն զհզօրն և զյորդն. զարքայն ասորեստանեայց՝ և զփառս նորա. և ելեսցէ՝ հասցի յամ ձորս ձեր: և ճեմեսցէ 'ի վերայ պարսպաց ձերոց: 8 * Եւ հանցէ յերկրէդ հրէաստանէ զայր. որ կարօղ իցէ ամբառնալ զգլուխ իւր. և զզօրաւորն. որ կարիցէ գործել ինչ. և եղիցի բանակ նորա ընուլ զլայնութի երկրիդ: 9 * Ընդ մեզ Ած, գիտասջիք հեթանոսք՝ և պարտեցարուք. լուարուք մինչև 'ի ծագս երկրի. հզօրացեալքդ պարտեցարուք. զի թէպէտ և դարձեալ զօրանայցէք. դարձեալ 'ի պարտութի մատնիջիք: 10 * Եւ զոր խորհուրդ և խորհիցիք՝ ցրեսցէ Տր. և զոր բան և խօսիցիք՝ մի հաստատեսցի ձեզ. քանզի ընդ մեզ Տր Ած է: 11 * Այսպէս ասէ Տր առ այնոսիկ՝ որք զօրութեամբ ձեռին ընդդէմ դառնան. ըստ գնացից ճանապարհաց ժողովրդեանս այսորիկ՝ և ասեն: 12 * Մի՛ք երբէք խօսիցին զխստութի: զի զամ զորինչ խօսի ժողովուրդդ այդ՝ խստութի է: և յերկիւղէ նոցա մի երկնչիցիք. և մի խռովիջիք: 13 * Զտր զօրութեանց՝ զնոյն սուրբ արասջիք. և նա եղիցի ձեզ երկիւղ. և եթէ 'ի նա յուսացեալ իցէք: 14 * Եղիցի ձեզ 'ի սրբութի: և ոտն քո զքարի ոչ հարկանիցի. և գայթագղութի քեզ ոչ պատահեսցի: բայց տուն յակոբու յորոգայթ և 'ի ծործորս դարանակալաց եէմի: 15 * Վասն այնորիկ տկարասցին 'ի նմա բազումք: անկցին՝ և խորտակեսցին. և մերձեսցին 'ի պաշարումն մարդիկ. որք 'ի շինուէ իցեն. 16 * Յայնժամ ժամանակի յայտնեսցին՝ որք կնքիցեն զօրէնս. մի ուսանիցի: 17 * Եւ ասիցէ, կացից, մնացից Այ՝ որ դարձոյց զերեսս իւր 'ի տանէն յակոբայ. և եղէց յուսացեալ 'ի նա

Մարգարէ ուհի

Ղուկ. 2. 34. Հռովմ. 9. 32. 1. Պետ. 2. 6.

18 *Ահաւասիկ ես և մանկունք իմ․ զորս ետ ինձ Ած․ և եղիցին նշանք՝ և արուեստք 'ի մէջ տանն Իէլի․ 'ի սաբաւովթ Տէ որ բնակեալ է 'ի լերինն սիօնի։ 19 *Եւ եթէ ասիցեն ցձեզ․ խնդրեցէք զվհուկս և զգէտնակոչս զբախօսս․ և զորովայնակոչս․ ոչ իբրև զազգ ոք՝ որ յԱյ իւրմէ խնդրիցէ․ զի՞նչ խնդրիցեն վս կենդանեաց, 'ի մեռելոց անտի։ 20 *Զի զօրէնս յօգնականութի ետ․ զի ասիցեն թէ ոչ իբրև զբանս զայս վս որոյ չիք կաշառս տալ։ 21 *Եւ եկեսցէ 'ի վերայ ձեր սով խստութե․ և եղիցի իբրև քաղցիցէք, տրտմեսջիք․ և հայհոյեսջիք զիշխանն և զաշխարհն ։ և ամբարձցեն զաչս իւրեանց յերկինս 'ի վեր ։ 22 *Եւ հայեսցին յերկիր 'ի խոնարհ․ և ահա կարօտութի և տառապանք՝ և խաւար՝ և նեղութի՝ և անձկութի՝ և մութ․ զի ոչոք կարիցէ տեսանել․ և որ իցէ 'ի նեղութեն՝ մի՛ նուազեսցի մինչև 'ի ժամանակն։

## ԳԼ: Թ.

1 ապայ նախ զայդ արբ՝ վաղվաղակի հեռ արա․ երկիր զաբուղոնի՝ և երկիր նեփթաղիմի՝ Ճանապարհ ծովու․ և այլքդ՝ որք բնակեալդ էք զծովեզերբդ․ և յայնկոյս յորդանանու․ գալիլեայ հեթանոսաց․ կողմանք հրէաստանի։ 2 *Ժողովուրդ՝ որ գնայր ընդ խաւար, տեսէս զլոյս մեծ․ և որ բնակեալդ էք յաշխարհիդ և 'ի ստուերս մահու, լոյս ծագեսցի 'ի ձեզ։ 3 *Զմեծ մասն ժողովրդեանդ՝ զոր իջուցեր յուրախութի քո․ և ուրախ եղիցին առաջի քո․ որպէս ուրախ լինիցին 'ի հունձս․ և ոպ բաժանիցեն զաւար։ 4 *Զի վերացաւ 'ի նոցանէ լուծն որ կայր 'ի վերայ․ և գաւազանն որ 'ի վզի պարանոցաց․ զի զգաւազան պահանջողացն մերժեաց՝ ‖ ոպ յաւուրն մադիամու ։ 5 *Զամ պատմուճան և զհանդերձ ժողովեալ նենգութբ, տուգանօք տուժեսցին ։ այլ նոքա կամէին թէ հրձիգք լեալ էին ։ 6 *Զի մանուկ ծնաւ մեզ․ որդի տուաւ մեզ ։ որոյ իշխանութիւն իւր եղև 'ի վերայ ուսոց իւրոց․ և անուն կոչեցաւ նմա հրեշտակ մեծի խորհրդոյ ։ սքանչելի՝ խորհրդակից՝ Ած՝ հզօր՝ իշխան՝ հայր հանդերձելոյ աշխարհին ։ 7 *Եւ ես ածից զխաղաղութի 'ի վերայ իշխանաց նր՝ և զառողջութի նմա․ մեծ է իշխանութի նր․ և խաղաղութե նր չիք սահման․ յաթոռն դաւթի նստցի՝ և զարքայութի նր յաջողեսցէ․ և զօրացուսցէ զնր իրաւամբք և արդարութբ․ յայսմհետէ և յաւիտեանս ժամանակաց․ նախանձ Տն զօրութեց արասցէ զայս ։ 8 *Մահ արձակեաց Տր 'ի վերայ յակոբայ․ եկն՝ և էհաս 'ի վերայ Իէլի ։ 9 *Եւ ծանիցեն ամ ժողովուրդն եփրեմեան՝ և որք նստին 'ի սամարիայ․ որք հպարտութբ և ամբարտաւանութբ 10 սրտից խօսեցան՝ և ասեն ։ *Աղիւսք անկան․ այլ եկայք վէմս տաշեսցուք ։ զմայրս և զեղևնափայտս հարցուք՝ և 11 շինեսցուք մեզ աշտարակ ։ *Եւ կործանեսցէ Ած զյարուցեալսն 'ի վերայ լերինն սիօնի․ և զթշնամիսն յուդայ 12 ցրուեսցէ ։ *Զասորեստանն յելիցն արևու․ և զյոյնսն 'ի մտիցն արևու․ ոյք ուտէին զԻէլ բերանալիր ամ բերանով․ 'ի վերայ այսր ամի ոչ դարձաւ բարկութիւն․ այլ տակաւին ձեռն իւր 13 բարձրացեալ է ։ *Եւ ժողովուրդն ոչ դարձաւ՝ մինչև վիրաւորեցաւ․ և 14 զՏր զօրութեց ոչ խնդրեցին ։ *Եւ եբարձ Տր յԻէլէ զգլուխն և զվերջն՝ զմեծն և զփոքրն 'ի միում աւուր։ 15 *Զծերն զակնառուսն՝ այս առաջնն է․ և զմարգարէն որ զանօրէնութիւն ուսուցանէր․ 16 այն վերջն է ։ *Եւ եղիցին՝ որք երանիցեն ժողովրդեանս այսմիկ՝ մոլորեալք՝ և մոլորեցուցանիցեն՝ 17 ոպ զի կլանիցեն զդոսա ։ *Վասն այսորիկ 'ի վերայ երիտասարդաց նորա ոչ եղիցի ուրախ Ած․ և որբոց նոցա և այրեաց մի ողորմեսցի․ զի ամենեքեան անօրէնք են՝ և չարք․ և ամ բերան խօսի զանօրէնութի․ 'ի վերայ այսր ամի ոչ դարձաւ բարկութի նորա․ այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է։ 18 *Եւ վառեսցի իբրև զհուր անօրէնութիւնն ։ և իբրև զսեզ չորացեալ այրեսցի 'ի հրոյ։ և վառեսցի յանտառս մայրեաց․ և շուրջ զամ բլուրք նոցա 19 հուր ճարակեսցի ։ *Վս սրտմտութե բարկութե Տն հրձիգ լիցի երկիրն ամ․ և եղիցի ժողովուրդն այրեցեալ իբրև 'ի հրոյ․ այր եղբօր իւրում մի 20 ողորմեսցի ։ *Այլ խոտորեսցի յաջակողմն իւր՝ առ քաղցի, կերիցէ զձախակողմն իւր, և մի յագեսցի մարդ ուտելով զմարմինս բազկաց իւրոց․ զի կերիցէ մանասէ զեփրեմ և եփրեմ զմա21 նասէ ։ *Եւ 'ի միասին պաշարեսցեն զյուդայ ։ 'ի վերայ այսր ամենայնի ոչ դարձցի բարկութի նորա՝ այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է։

## ԳԼ: Ժ.

1 Վայ այնոցիկ՝ ոյք գրեն զչարիս․ գրելով գրեն զչարիս իւրեանց ։ 2 *խոտորեն զդատաստանս աղքատաց․ և

‡ Դատ․ 7․22․

Իշխան խաղաղութե

եւ զիրաւունս տնանկաց ժողովրդեան իմոյ յափշտակեն. զի լինիցին նոցա այրին ՚ի յափշտակութիւն, եւ որբն յաւար։

3 *Եւ զինչ գործեսջիք յաւուրն այցելութեան. զի նեղութիւն ձեր ՚ի հեռաստանէ եկեսցէ. եւ առ ո՞ փախստեայ անկանիցիք յօգնականութիւն. եւ ո՞ւր թողուցուք զփառսն ձեր։ 4 *Եթէ ոչ մտանիցէ ՚ի գերութիւն. եւ ՚ի ներքոյ սպանելոցն մտանիցեն. ՚ի վ՞ն այսր ամենայնի ո՛չ դարձաւ բարկութիւնն. այլ տակաւին ձեռն իւր բարձրացեալ է։

5 *Վայ ասորեստանեայն. գաւազան բարկութեան սրտմտութեան իմոյ ՚ի ձեռս նց։ 6 *Զբարկութիւն իմ յազգ անօրէն առձակեցից. եւ իմում ժողովրդեան կարգեցից առնել զաւար եւ զյափշտակութիւն. կոխան առնել զքաղաքս՝ եւ դնել զնոսա ՚ի փոշի։ 7 *Նա ոչ այնպէս խորհեցաւ. եւ ոչ այնպէս համարեցաւ յանձին. այլ դարձցի զմիտս իւր սատակել զազգս ոչ սակաւս։ 8 *Եւ եթէ ասիցեն ցնա. դու միայն ես իշխան. ասասցէ. 9 *Ոչ առի զաշխարհն որ ՚ի վերէ քան զբաբիլոն՝ եւ զքաղանէ ուր աշտարակն շինեցաւ. առի եւ զարաբիայ եւ զդամասկոս՝ եւ զսամարիայ։ 10 *Ոպ զնոսայն առի ձեռամբ իմով. նոյնպէս առից եւ զամ իշխանութիւնս։ ողբացէք կռօշեալք որք յերուսաղէմ՝ եւ ՚ի սամարիայ։ 11 *Զի զորօրինակ արարի ընդ սամարիայ՝ եւ ընդ ձեռագործս իւր. նոյնպէս արարից ընդ երէմ՝ եւ ընդ կուռս իւր. 12 *Եւ եղիցի՝ յորժամ կատարեսցէ Տր առնել զամենայն ինչ ՚ի լերին սիոնի եւ յերուսաղէմ. ածցէ ՚ի վերայ մեծամտին զբարկութիւն։ *‖ Դ վ՞ր իշխանին ասորեստանեայց. եւ ՚ի վերայ հպարտացեալ փառաց աչաց նորա։ 13 *Քանզի ասաց եթէ զօրութբ իմով արարից. եւ իմաստութբ խորհրդոց իմոց բարձից զսահմանս ազգաց. եւ զաւեց յաւար զզօրութիւնս նց՝ շարժեցից զքաղաքս բնակեալս։

14 *Հասից ՚ի վ՞ր ամենայն տիեզերաց ձեռամբ իմով. իբրեւ ՚ի վերայ բունոյ. եւ բարձից իբրեւ զձուս մնացեալս. եւ ոչ ոք իցէ՝ որ ապրեսցի յինէն. եւ ոչ որ ընդդէմ դառնայցէ ինձ. եւ բանայցէ զբերան իւր՝ եւ ճիկ հանիցէ։ 15 *Քայնպէս ասէ Տր. մի թէ վերանայցէ՞ փայտատ առանց փայտահարի. կամ բարձրանայցէ՞ սղոց առանց ուրուք ձգելոյ։ նոյնպէս թէ զգաւազան ոք կամ զփայտ ինչ առնուցու՝ նա եւ ոչ այնպէս։ 16 *Քայլ առաքեսցէ Տր զօրութեց ՚ի պատիւ քո անարգանս. եւ ՚ի փառս քո հուր վառեալ բորբոքեսցի։ 17 *Եւ եղիցի լոյսն իէլի հուր. եւ սրբեսցէ զնա հրով բորբոքելով. եւ կերիցէ իբրեւ զխոտ զանտառն յաւուր յայնմիկ։ 18 *Շիջցին լերինք եւ բլուրք եւ մայրք. եւ կերիցէ ՚ի շնչոյ մինչեւ ՚ի մարմին։ եւ եղիցի ապրեալն իբրեւ զայն՝ որ ապրեալ իցէ ՚ի բորբոքելոյ բոցոյ։ 19 *Եւ մնացեալքն ՚ի նոցանէ թուով եղիցին. եւ մանուկ տղայ գրեսցէ զնոսա։ 20 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ոչ եւս յաւելցին մնացորդքն իէլի՝ եւ ապրեալքն յակոբայ. եւ ոչ եւս ապաստան լիցին ՚ի զրկիչս իւրեանց. այլ եղիցին ապաստան յԱծ սուրբն իէլի ճշմարտութբ։ 21 *Եւ եղիցին մնացեալքն յակոբայ յԱծ զօրացեալս։

22 *‖ Եւ եթէ եղիցի ժողովուրդ իմ իբրեւ զաւազ ծովու. սակաւք ինչ մնացորդք մնասցեն ՚ի նոցանէ. զի բան մի հակիրճ եւ համառօտ արդարութբ։ 23 *Զբանն համառօտ արասցէ Տր զօրութեց ընդ ամենայն տիեզերս։ 24 *Վասն այսորիկ այսպէս ասէ Տր Տր զօրութեց. մի երկնչիր ժողովուրդ իմ՝ որ բնակեալ ես ՚ի սիոն՝ յասորեստանեայցն. զի եթէ հարկանէ զքեզ գաւազանաւ՝ քանզի ես ածեմ՝ ՚ի վերայ քո զհարուածս ճանաչել քեզ զճանապարհն եգիպտացւոց։ 25 *Զի փոքր մւեւս դադարեսցէ բարկութիւնն. բայց սրտմտութիւն իմ՝ ՚ի վ՞ր խորհրդոց նց։ 26 *‖ Եւ յարուցէ Տր Աւծ ՚ի վ՞ր նց հարուածս ‖ ըստ հարուածոցն մադիամու՝ ՚ի տեղին չարչարանաց. եւ սրտմտութիւն նր ըստ ճանապարհին ծովու՝ 27 որ յեղեցն եգիպտացւոց։ *Եւ եղիցի յաւուր յայնմիկ բարձցի երկիւղ նր ՚ի քէն. եւ լուծ ՚ի պարանոցէ քումմէ վերասցի. եւ խորտակեսցի լուծն յուսոց ձերոց։ 28 *Քանզի հասցէ ՚ի քաղաքն անգէ. եւ անցցէ ՚ի մագեդով. եւ ՚ի մաքմաս դիցէ զկազմած իւր։ 29 *Եւ անցցէ ընդ ձորս. եւ հասցէ ՚ի վ՞ր գաբաւոնայեւոց. ահ առցէ զհռամայ զքաղաքն շաւուղի փախիցէ դուստր գաղ իմայ։ 30 *Խնջեա ձայնիւ քումլ լու լիցի ՚ի լայիս. լու լիցի յանաթովթ։ 31 *Զարհուրեսցի մադեբենայ. եւ որք բնակեալն են ՚ի գիբեմ, մխիթարեսցին։ 32 *Յայսօր ագանել ՚ի ճանապարհին. մխիթարեսցի ձեռամբ լեառնն դստեր սիոնի. եւ բլուրն որ յէմ։ 33 *Զի աչաւասիկ Տր Տր զօրութեց խռովեցուսցէ զփառաւորեալսն զօրութբ. եւ բարձրացեալքն ամբարտաւանութբ խորտակեսցին. 34 *Եւ անկցին բարձունք սրով. եւ լիբանան բարձամբք իւրովք կործանեսցի։

[Margin notes: Դ Թագ. 19. 35. — Ագր. 37. 36. — Հռոմ. 9.27. — 11.11. — Ագր. 37. 36. — Դատաւ. 7.25.]

## ԳԼ. ԺԱ.

‖ Գործ. 13. 23.

1 Եւ բղխեսցի գաւազան յարմատոյն Յեսսեայ. և ելցէ ծաղիկ յարմատոյ անտի։ 2 *Եւ հանգիցէ ՛ի վ՟ն նորա հոգի Ա՟յ. հոգի իմաստութեան և հանճարոյ. հոգի խորհրդոյ՝ և զօրութեան. հոգի գիտութեան և Ա՟ծպաշտութեան։ 3 *Եւ լցցէ զնա հոգի երկիւղի Ա՟յ. ոչ ՛ի կարծ դատեսցէ. և ոչ ըստ խօսից յանդիմանեսցէ։ 4 *Ա՟յլ արասցէ իրաւունս տնանկին. և յանդիմանեսցէ զխոնարհս երկրի‖ և հարցէ զերկիր բանիւ բերանոյ իւրոյ. և հոգւով շրթանց իւրոց սատակեսցէ զամպարիշտս։ 5 *Եւ եղիցի արդարութեամբ ածեալ ընդ մէջ իւր. և ճշմարտութեամբ պատեալ զկողս իւր։

‖ 2. Թես. 2. 8.

6 *‖Եւ ճարակեսցի գայլ ընդ գառին. և ինձ առ ուլու մակաղեսցի. և որթ եցուլ՝ և առիւծ՝ ՛ի միասին ճարակեսցեն. և մանուկ մատաղ ածցէ զնոսա։ 7 *Եզն՝ և արջ ՛ի միասին ճարակեսցեն. և որդեակք նոցա խառն շրջեսցին. և առիւծ իբրև զեզն յարդ կերիցէ։ 8 *Եւ մանուկ մատաղ ՛ի ծակ իժից և ՛ի բոյն կորեանց իժից արկցէ զձեռն իւր։ 9 *Ոչ մեղիցեն. և մի կարասցեն հարկանել զոք ՛ի լերին սրբութեան իմոյ. զի լցաւ երկիր ամ՟ գիտութեամբ Տ՟ն իբրև զջուրս բազումս. որք ծածկեն զծովս։

‖ Եսայ. 65. 25.

10 *‖Եւ եղիցի յաւուր յայնմիկ արմատն Յեսսեայ. և որ կանգնելոց է իշխան հեթանոսաց՝ ՛ի նա հեթանոսք յուսասցին. և եղիցի հանգիստ նր՟ պատուով։ 11 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ յաւելցէ Տ՟ր ցուցանել զձեռն իւր. նախանձելով առնել զմնացորդս ժողովրդեան իւրոյ. որք մնացեալ իցեն յասորեստանեայց՝ և յեգիպտացւոց՝ և ՛ի բաբելացւոց՝ և յեթեօպացւոց՝ և յեղամացւոց՝ և յելից արևու՝ և յարաբացւոց. և ՛ի կղզեաց ծովու։ 12 *Եւ բարձրացուսցէ նշան ՛ի հեթանոս. և ժողովեսցէ զկորուսեալսն իսրայէլի. և զցրուեալսն յուդայ ժողովեսցէ ՛ի չորից անկեանց երկրի։ 13 *Եւ բարձցի նախանձն եփրեմի. և թշնամիքն յուդայ կորիցեն. եփրեմ ոչ նախանձեսցի ընդ յուդայ. և յուդա ոչ նախանձեսցի ընդ եփրեմայ։ 14 *Եւ թռիցին նաւք այլազգեաց. առցեն աւար միանգամայն զծովակողմն. և զարևելեայսն. և զեդովմայեցիս. արկցեն զձեռս իւրեանց նախ ՛ի մովաբ. և որդիքն ամոնայ յառաջագոյն հնազանդեսցին։ 15 *Եւ փլուզցէ Տ՟ր զծովն եգիպտացւոց. և արկցէ զձեռն իւր ՛ի վերայ գետոյն հոգւով սաստկութեան. և հարցէ զեօթնաձորն. զի համարձակ լիցի ընդ նա գնալ և ագելովն։ 16 *Եւ եղիցի անց մնացելոց ժողովրդեան իմոյ՝ որ յեգիպտոս. և եղիցի իսրայէլի որպէս յաւուրն յորում ել յերկրէն եգիպտացւոց։

‖ Հռով. 15. 12.

այնպէս. ոչ մնա_ ցեն ընդ նա կող_ մնարսք։

## ԳԼ. ԺԲ.

1 Եւ ասասցես յաւուր յայնմիկ՝ օրհնեցից զքեզ Տ՟ր. զի բարկացար ինձ. և դարձուցեր զսրտմտութիւն քո յինէն. և ողորմեցար ինձ։ 2 *Ա՟ծ հաւասիկ Ա՟ծ իմ. փրկիչ իմ Տ՟ր. և յուսացեալ եղէց ՛ի նա. և փրկեցայց նովաւ. և ոչ երկեայց. ‖զի փառք իմ և օրհնութիւն իմ Տ՟ր. և եղև ինձ ՛ի փրկութիւն։ 3 *Եւ առէք զջուր ուրախութեան յաղբերացն փրկութեան։ 4 *Եւ ասասցես յաւուր յայնմիկ. օրհնեցէք զՏ՟ր. հնչեցէք զանուն նր՟. պատմեցէք ՛ի հեթանոսս զփառս նորա. յիշեցէք՝ զի բարձրացաւ անուն նր՟։ 5 *Օրհնեցէք զանուն նր՟, զի մեծամեծս արար. պատմեցէք զայս յամ՟ երկիր։ 6 *Ցնծացէք՝ և ուրախ լերուք բնակիչք սիոնի. զի բարձրացաւ սր՟ն իսրայէլի ՛ի մէջ նոցա։

‖ Ել. 15. 2. Սաղ. 117. 14.

## ԳԼ. ԺԳ.

1 Տեսիլ Բաբելացւոց՝ զոր ետես Եսայի որդի Ամովսայ։

2 ՛Ի վ՟ր լերինն դաշտականի առէք նշան. բարձրացուցէք զբարբառ ձեր ՛ի վ՟ր նր՟. մի երկնչիք, կոչեցէք ձեռամբ. բացէք իշխանք։ 3 *Եւ ես տաց հրաման. նուիրեալք են՝ և ես ածից զնս՟. գիմեալք գան սկայք յագեցուցանել զսրտմտութիւն իմ. խնդան՝ գան միանգամայն. և թշնամանեն։ 4 *Ձայն ազգաց բազմաց ՛ի վ՟ր լերանց՝ ՛ի նմանութիւն ազգաց բազմաց. ձայն թագաւորաց ազանց միահամուռ ժողովելոց. Տ՟ր զօրութեանց հրաման ետ ազգաց սպառազինաց։ 5 *Գալ յերկրէ հեռաստանէ. ՛ի ծագաց հիմանց երկնից. հասեալ է Տ՟ր իւրովք սպառազինօք սատակել զամ՟ տիեզերս։ 6 *Ողբացէք՝ զի մերձ է օր Տ՟ն. և բեկումն յԱ՟յ հասեալ է։ 7 *Վ՟ա այսորիկ ամ՟ ձեռք լքցին. և ամ՟ անձն մարդոյ դողասցի։ 8 *Խռովեսցին հրեշտակք. և երկունք կալցեն զնս՟ իբրև զկանայս ծննդականս. փռնկայցեն այր ընդ ընկերի՝ և զարհուրեսցին. և զդէմս իւրեանց ՛ի բոցագոյնս դարձուսցեն։ 9 *Զի ահաւասիկ Տ՟ր հասեալ է անհնարին լի բարկութեամբ՝ ոխակալութեամբ՝ և սրտմտութեամբ. առնել զտիեզերս անապատ. և զմեղաւորս սատակել ՛ի նմանէ։

*‖Օի

Եզեկ. 32.7. Յովէլ. 3.15. Մատ. 24.29. Մարկ. 13.24. Ղուկ. 21.25.

10 *‖ Զի աստեղք երկնից հայկին հան դերձ, և ամ զարդուն երկնից զլոյս մի տացեն. և խաւարեսցի արեգակն 'ի ծագել իւրում. և լուսին մի տացէ զլոյս իւր։ 11 *Եւ հրաման տաց ընդ ամ տիեզերս զչարիս. և ամպարշտաց զմեղս իւրեանց. և կորուսից զհպարտութիւն անօրինաց. և զբարձրութիւն ամբարտաւանից խոնարհեցուցից։

զոսկի ընտիր.

12 *Եւ եղիցին մնացեալքն պատուականք առաւել քան զոսկի անհուր. և մարդն պատուական եղիցի քան զականս պատուականս սոփերայ։ 13 *Զի երկինք զայրասցին. և երկիր սասանեսցի 'ի հիմանց իւրոց. 'ի սրտմտութենէ բարկութեան Տն զօրութեանց. յաւուր յորում հասեալ իցէ սրտմտութիւն նորա։ 14 *Եւ եղիցին մնացեալքն իբրև զայծեամն փախուցեալ. և իբրև զոչխար մոլորեալ. և ոչ ոք իցէ որ ժողովիցէ. զի մարդն անդրէն 'ի ժողովուրդ իւր դարձցի. և այր իւրաքանչիւր յերկիր իւր հալածեսցի։ 15 *Զի որ ըմբռնեսցի, 'ի պարտութիւն մատնեսցի. և ժողովեալքն 'ի սուր անկցին։

Սաղմ. 136. 9.

16 *‖ Եւ զորդիս նց առաջի նց սատակեսցեն. և զտունս նց աւար հարկանիցեն. և զկանայս նոցա խայտառակեսցեն։ 17 *Ահաւասիկ յարուցանեմ 'ի վր ձեր զմարս` որք ոչինչ համարին զարծաթ և զոսկի։ 18 *Զաղեղունս երիտասարդաց խորտակեսցեն. և որդւոցն ձերոց մի ողորմեսցին. և 'ի մանկունս ձեր ոչ խնայեսցէ ակն նց։ 19 *Եւ եղիցի բաբելոն` որ փառաւոր կոչի 'ի թագաւորէն քաղդէացւոց. ‖ որպէս կործանեաց ԱԾ զսոդոմ և զգոմոր։

Ծննդ. 19.24. Երեմ. 50. 40.

20 *Եւ ոչ բնակեսցի յաւիտեանս ժամանակաց. և մի մտցեն 'ի նմա ազգք բազումք. և մի ևս անցցեն ընդ նա արաբացիք. և հովիւք մի հանգիցեն 'ի նմա։ 21 *Այլ անդ հանգիցեն գազանք վայրենիք. և լցցին տունք նց աղաղակաւ. և անդ հանգիցեն համբարուք. և անդ դևք կաքաւեսցեն։ 22 *Եւ յուշկապարիկք բնակեսցին 'ի նմա. և ոզնիք ձագս հանցեն յապարանս նորա։

## ԳԼ: ԺԴ:

1 Աղվաղակի հասեալ գայ. ոչ անսա գանեսցի. և աւուրք նր մի յեր կարեսցին։ և ողորմեսցի Տր յակոբայ. և ընտրեսցէ միւսանգամ զիէլ. և հան գիցեն յերկրի իւրեանց։ և յաւելցի պանդուխտն 'ի տունն յակոբայ։ 2 *Ընկալցին զնս հեթանոսք. և ածցեն 'ի տեղիս իւրեանց` և ժառանգեսցեն։ և բազմասցին յերկրին այ 'ի ծառայս և յաղախնայս։ և եղիցին գերիք գերեվարք նց և անկցին 'ի ծառայութիւն` որք տիրէին նց։ 3 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ. հանգուսցէ զքեզ Տր 'ի ցաւոց և 'ի սրտմտութենէ քումմէ. և 'ի ծառայութենէ խստութենէ` զոր ծառայեցեր նց։ 4 *Եւ առցես զողբս զայս 'ի վերայ թագաւորին բաբելացւոց. և ասասցես յաւուր յայնմիկ. զիարդ դադարեալ կայ պահանջօղն. հանգեաւ տագնապօղն։ 5 *Զի խորտակեաց Տր զլուծ մեղաւորացն. զլուծ իշխանացն։ 6 *Սատակեաց զազգան սրտմտութբ. անհնարին հարուածովք յանխնայ։ 7 *Հանգեաւ յուսով երկիր ամ. և դոչէ ուրախութբ։ 8 *Եւ փառքն լիբանանու ուռահարք եղեն քեզ. և մայրքն լիբանանու ասեն. թէ յորմէ հետէ դադարեցեր` ոչ ելին 'ի մեզ փայտահարք։

նոճոյտն.

9 *Դժոխք 'ի ներքուստ դառնացան 'ի պատահել քեզ. կանգնեցան միանգամայն հսկայքն ամ` որք լեալ էին իշխանք յերկրի. որք յարուցին յաթոռոց իւրեանց զամ թագաւորս ազգաց։ 10 *Ամենեքեան պատասխանի տացեն քեզ` և ասասցեն. և դու իբրև զմեզ ըմբռնեցար. և ընդ մեզ համարեցար։ 11 *Էջին 'ի դժոխս փառք քո. և բազում ուրախութիւն քո. 'ի ներքոյ քո մէջս տարածեսցեն. և 'ի վր քո որդն յարկցի։ 12 *Զիարդ անկաւ յերկնից արուսեակն. որ ընդ առաւօտն ծագէր. անկաւ յերկիր, խորտակեցաւ` որ առաքէր առ ամ ազգս։ 13 *Դու ասէիր 'ի միտ քում. ելից յերկինս. 'ի վերայ քան զաստեղս երկնից` արկից զաթոռ իմ. նստայց 'ի լերինն բարձու. 'ի վերայ լերանցն բարձանց հիւսիսոյ։ 14 *Ելից 'ի վեր քան զամպս. եղէց նմանօղ բարձրելոյն։ 15 *Արդ աւադիկ 'ի դժոխս իջցես և 'ի հիմունս երկրի։ 16 *Որք տեսանիցեն զքեզ` զարմասցին 'ի վր քո` և ասասցեն. այս այն այր է. որ զայրացուցանէր զերկիր. շարժէր զթագաւորս։ 17 *Որ առնէր զամ` տիեզերս աւերակ. և քակէր զքաղաքս նց. գերեաց գերեդարձ ոչ արար։ 18 *Ամ թագաւորք ազգաց ննջեցին պատուով. այր իւրաքանչիւր 'ի տան իւրում։ 19 *Եւ դու անկցիս 'ի վր լերանց իբրև զմեռեալ. զարշելի 'ի մէջ դիականց կոտորելոց սրով իջելոց 'ի դժոխս. իբրև զձորձս արեամբ թաթաւեալ` որ ոչ իցէ սբ։ 20 *Նոյնպէս և դու ոչ սրբեսցիս. զի ապականեցեր զերկիր իմ. և զժողովուրդ իմ կոտորեցեր. մի մնասցես յաւիտեանս ժամանակաց զաւակ չար։ 21 *Պատրաստեա՛ զորդիս քո 'ի սպանումն

վն

ղն մնացաց հարց իւրեանց. զի մի՛ յարիցեն, և ժառանգեսցեն զերկիր. և լցցեն զերկիր պատերազմօք: 22 * Յարեայց ՚ի վերայ նոցա ասէ Տէր սաբաւովթ. և կորուսից զանուն նոցա և զզարմ. և զզաւակ՝ ասէ Տէր զօրութեանց: և արարից զբաբելոն աւերակ: 23 * Զի բնակեսցին ՚ի նմա ոզնիք. և եղիցի յոչինչ. և արարից զնա խորխորատ տղմոյ ՚ի կորուստ: 24 այսպէս ասէ Տէր զօրութեանց: * Զոր օրինակ ասացի. այնպէս եղիցի. և որպէս խորհեալ եմ: 25 * Այն կացցէ. սատակել զասորեստանեայս յերկրի իմում՝ և ՚ի վերայ լերանց իմոց: և եղիցին ՚ի կոխումն. և բարձցի ՚ի ձէնջ լուծ նոցա. և գոռոզութիւն նոցա ՚ի պարանոցէ ձերմէ վերասցի: 26 * Այս խորհուրդ է՝ զոր խորհեցաւ Տէր ՚ի վերայ ամենայն տիեզերաց. և այս ձեռն բարձրացեալ ՚ի վերայ ամենայն ազգաց: 27 * Զի զոր Տէրն Աստուած խորհեցաւ. ո՞վ իցէ, որ զայն ցրիցէ. և զբարձրացեալ ձեռն նորա՝ ո՞վ իցէ՝ որ դարձուցանիցէ: 28 * Յամին յորում մեռաւ աքազ արքայ՝ եղև պատգամս այս ՚ի վերայ այլազգեացն: 29 * Մի՛ ուրախ լինիք ամենայն այլազգիք. թէ խորտակեցաւ լուծ հարկանողացն ձերոց: զի ՚ի զաւակէ օձին ելցեն ծնունդք իժից. և ՚ի նոցանէ ելցեն օձք թևաւորք: 30 * Եւ բուծցին աղքատք նոքաւ. և տնանկ մարդիկք ՚ի խաղաղութեան բնակեսցին. և սատակեսցի սովու զաւակ քո: և զմնացորդս քո սատակեսցէ: 31 * Ողբացէք դրունք քաղաքաց. ձայն արկցեն քաղաքք խռովեալք՝ ամենայն այլազգիք. զի ծուխ եկեալ ՚ի հիւսիսոյ. և ոչ էր որ դատանիցի: 32 * Եւ զի՞նչ տացեն պատասխանի թագաւորք ազգաց. զի Տէր հաստատեաց զհիմունս սիոնի. և նովաւ փրկեսցին խոնարհք ժողովրդեանն:

## Գլ. ԺԵ.

Պատգամ ՚ի վերայ Մովաբացւոց: 1

Գիշերի սատակեսցի Մովաբացին. գիշերի կործանեսցի պարիսպ Մովաբացւոցն: 2 * Մուտ առէք յանձինս. զի կորեաւ դեդեբօն տեղի մեհենին ձերոյ. անդր ելանիցէք լալ ՚ի մաբաւ Մովաբացւոց: ողբացէք ‖ զի ամենայն գլուխ ՚ի կնտութիւն. և ամենայն բազուկք խորտակեալք: 3 * ՚Ի հրապարակս նորա քուրձ զգեցարուք: ՚ի վերայ տանեաց նորա կոծեցարուք. և ՚ի փողոցս նորա ողբացէք լալով: 4 * Զի գուժեաց եսեբօն. և եղէլեայ: մինչև յասսայ լսելի եղեն ձայնք նոցա. վասն այնորիկ երկար Մովաբացւոյն գոչէ. և անձն իւր ծանիցի: 5 * Սիրտ Մովաբացւոյն գոչէ յանձն իւր մինչև ՚ի սեգոր. քանզի երինջ երեմեան է: և ընդ ելսն դուխեթայ լալով ելցեն առ քեզ: ՚ի ճանապարհին արօնիմ. գոչէ բեկումն. և շարժումն: 6 * Ջուր նեմերիմայ պակասեսցի. և ցամաքեսցի: և խոտ նորա նուաղեսցի. և դեղ դալար անդ մի՛ գտցի: 7 * Մի թէ և այնպէս ապրելոց իցէ. քանզի ածից ՚ի վերայ ձորոյ զարաբացիս. և առցեն զնա: 8 * Զի կցեցաւ բողոք սահմանաց Մովաբացւոյ՝ ընդ բողոքս գաղլիմացւոյն. և ողբումն նորա մինչև ՚ի ջրհորն եղիմ՝ ողբումն նորա: 9 * Եւ ջուրն ռեմոնայ լցցի արեամբ. զի ածից ՚ի վերայ ռեմոնայ զարաբացիս. և բարձից զզաւակն Մովաբու և զարիէլ. և զմնացորդսն ադամեայ: առաքեցից որպէս սողունս ընդ երկիր:

## Գլ. ԺԶ.

1 Մի՞թէ ապառաժ աւերակ իցէ լեառն դստեր սիոնի: 2 * Եւ եղիցիս իբրև հաւու թռուցելոյ ձագ մնացեալ դստեր Մովաբացւոյ: 3 * Ապա և դու առնօն՝ աւելի ինչ խորհեաց առնել յարկս սգոյն նորա հանապազ: ՚ի միջօրէի իբրև ընդ խաւար փախիցեն: 4 * Զարհուրեցան. ոչ վարեսցին, զի պանդխտեսցին փախստականքն Մովաբու. և եղիցին ձեզ ապաւէն յերեսաց հալածչի. զի բարձաւ ընկեր մարտին քոյ՝ և իշխանն կորեաւ՝ որ կոխէր զերկիր: 5 * Եւ ուղղեսցի ողորմութեամբ աթոռ. և նստցի ՚ի վերայ նորա ճշմարտութեամբ ՚ի յարկսն դաւթի: դատեսցէ՝ և խնդրեսցէ զիրաւունս. և փութասցի առնել զարդարութիւն: 6 * ‖ Լուաք զամբարտաւանութիւն Մովաբու՝ զի հպարտացեալ էր յոյժ: հպարտութիւն նորա. և ոխակալութիւն՝ և ամբարտաւանութիւն քո բարձցի ՚ի քէն: ո՛չ այնպէս՝ որպէս դիւթութիւնն քո: 7 * Եւ ոչ այնպէս ողբասցեն ՚ի Մովաբ: զի ՚ի Մովաբ ողբասցեն ամենեքեան զայնոսիկ՝ որք բնակեալք են ՚ի դեսեթ: մռմնջեսցես՝ և ո՛չ պատկառեսցիս: 8 * Դաշտքն եսեբօնայ սուգ առցեն. և այգիքն սեբեմայ. որք կլանէին զազգս: կոխեցէք զայգիս նորա մինչև յազեր. և մի՛ խառնիցիք. մոլորեցայք յանապատի: առաքեալք նորա լքան. քանզի անցին ընդ ծով: 9 * Սմա այսորիկ լացից իբրև զլալումն յազերայ զայգիս սեբեմայ: զծառատունկսն քո կոտորեաց եսեբօն և եղէլեայ: զի զհունձս քո՝ և զկութս քո՝ կոխեսցին՝ և ամենեքեան կործանեսցին: 10 * Եւ բարձցի ուրախութիւն և ցնծութիւն յայգեաց. և յայգեստանի քում ուրա_

‖ Երեմ. 48. 37. Եզեկ. 7. 18.

‖ Երեմ. 48. 29.

դիբոնայ

դիբոնայ

ուրախութիւն մի՛ լիցի. և մի՛ կոխեսցեն զգինի՛ ՝ի հնձանս. քանզի պակասեցաւ։ *Վա՛ս այնորիկ որովայն իմ՝ ՝ի վ՛ր մովաբու՝ իբրև զքնար հնչեսցէ. և զփոր իմ իբրև զպարիսպ նորոգեցեր։ *Եւ եղիցի քեզ այն յամօթ. զի աշխատեցաւ մովաբ՝ ՝ի մեհեանս իւր. և մտցէ ուխտաւորն ՝ի ձեռագործս իւր. և մի՛ կարասցեն փրկել զնա։ *Այս բանն՝ զոր խօսեցաւ Տէր երբեմն ՝ի վերայ Մովաբու։ *Եւ այժմ դարձեալ խօսեցաւ՝ և ասէ։ Զերիս ամս զ՛ամաց վարձկանի անարգեսցին փառքն մովաբու յամենայնի բազում մեծութե իւրում. և մնասցէ սակաւաւոր և ոչ պատուական։

## Գլ։ ԺԷ։

Պատգամ ՝ի վերայ Դամասկոսի։

Ահաւասիկ Դամասկոս բարձցի ՝ի քաղաքացն. և եղիցի ՝ի կործանումն։ *Լքեալ յաւիտեանս ՝ի մակաղս տեղւոյ հօտից. և ՝ի հանգրուանս անդեոց և ոչոք իցէ՝ որ հալածիցէ։ *Եւ ո՛չ ևս եղիցի ամուր ապաստանի եփրեմի. և ո՛չ ևս կացցէ թագաւորութի ՝ի դամասկոս. և ո՛չ մնասցեն մնացորդք ասորւոց. զի ո՛չ դու լաւ ես քան զորդիսն իղի, և զփառս նոցա։ այսպէս ասէ Տէր զօրութեց։ *Եղիցի յաւուր յայնմիկ պակասութի փառացն յակոբայ. և յաճախութի փառացն նր շարժեսցի։ *Եւ եղիցի որպէս ոք՝ զի ժողովէ զորայ կանգունն ՝ի գիրկս իւր. և շրջիցի հասկաքաղ զլինի նորա. և եղիցի ո՛րպ քաղիցէ ոք հասկ ՝ի ձորն հաստատութե։ *Եւ մնասցէ ՝ի նմա խոզան. կամ իբրև զպտուղս ձիթենւոյ՝ երկուս կամ երիս ՝ի բարձրութե ծայրիցն. կամ չորք կամ հինգ յոստսն մնայցեն. այսպէս ասէ Տէր Ած իղի։ *Յաւուր յայնմիկ յուսացեալ լիցի մարդ յարարիչ իւր. և աչք նորա ՝ի սուրբն իղի հայեսցին։ *Եւ մի՛ ևս յուսացեալ եղիցին ՝ի մեհեանս իւրեանց. և մի՛ ՝ի գործս ձեռաց իւրեանց՝ զոր արարին մատունք նց. այլ եղիցին յուսացեալ ՝ի օծն իղի. և ոչ ևս հայեսցին յանտառս իւրեց. և ոչ ՝ի գարշելիս իւրեանց։ *Յաւուր յայնմիկ եղիցին քաղաքք քո լքեալք. զոր օրինակ լքան ամորհացիքն. և խևացիքն. յերեսաց որդւոցն իղի. և եղիցին աւերակք։ *Փոխանակ զի թողեր զԱծ փրկիչ քո. և զՏր զօգնական քո ո՛չ յիշեցեր. վն այսորիկ տնկեսցես զտունկ անհաւատ՝ և զսերմն անհաւատ։ *Յաւուր յորում տնկեսցես, վրիպեսցիս. ՝ը առաւօտս եթէ սերմանեսցես, ծաղկեսցի, յամառն՝ յաւուր յորում ժառանգեսցես. ո՛րպ հայր՝ որ թողուցու զժառանգութի որդւոց իւրոց։ *Վա՛յ բազմութեան ազգաց բազմաց. իբրև զծով ալեօք կուտակեալ՝ այնպէս խռովեսջիք. և մկանունք ազգաց բազմաց իբրև ըզ ջուրս գոչեսցեն։ *Եւ իբրև զջուրս բազումս ազգք բազումք. իբրև ջուրց բազմաց բռնութի հոսանաց. և վանեսցէ զնա. և ՝ի բաց հալածեսցէ. և իբրև զունդ յարդի հոսեալ յերեսաց հողմոյ. և իբրև զփոշի անուոյ ՝ի փոթորկէ մրրկեալ։ *Ընդ երեկոյս սուգ առցեն. յառաջ քան զառաւօտն՝ և այլ ոչ ևս իցեն. այս է բաժին աւարառուաց ձերոց. և ժառանգութիւն, որք զձեզն ժառանգէին։

## Գլ։ ԺԸ։

Վա՛յ երկրին ՝ի թևս նաւացն յայն կոյս գետոյն եթէովպացւոց։ *Որ առաքէր պատարագս ընդ ծով. և թուղթս մագաղաթեայս ՝ի վերայ ջուրցն մկանանց. զի երթիցեն հրեշտակք երագունք յազգ անօրէն հպարտացեալ՝ յազգ օտար և ՝ի չար. զի ոչ ևս ոք իցէ քան զնա անդր։ յազգ անյոյս և ՝ի կոխեալ. *Եւ այժմ գետք՝ ամ երկրին իբրև զաշխարհ բնակեալ. բնակեսցի աշխարհ նց՝ իբրև նշան ՝ի լեռնէ բարձցի. և իբրև զձայն փողոյ լսելի եղիցի։ *Զի այսպէս ասաց ցիս Տր՝ զդուշութիւն եղիցի յիմում քաղաքի՝ իբրև զլոյս տօթագին ՝ի միջօրէի. և իբրև զամպ ցօղագին յաւուրս ամարայնոյ։ *Յառաջ քան զհունձս յորժամ բոլանդակեսցի ծաղիկն՝ և ազոխն. ծաղկեսցի ծաղիկն ազոխացեալ՝ և հատանիցէ զմանր մանր ողկուզոցն մանգաղաւ. և զուռսն կորիցէ. և ՝ի բաց հանիցէ։ *Եւ թողուցու միանգամայն թռչնոց երկնից՝ և գազանաց երկրի. և ժողովեսցին ՝ի վերայ նորա թռչունք երկնից. և ամենայն գազանք երկրի հասանիցեն ՝ի վերայ նորա։ *՝Ի ժամանակին յայնմիկ մատչիցին պատարագք Տն զօրութեց ՝ի նեղեալ և ՝ի խոնարհ ժողովրդենէ. և ՝ի մեծէ ժողովրդենէ. յայսմհետէ և յաւիտեանս ժամանակաց. ազգ անյոյս և կոխեալ. որ է ՝ի կողմն գետոյ աշխարհի նորա. ՝ի տեղւոջ ուր անուն Տն զօրութեանց կոչեցաւ ՝ի վերայ լերինն սիոնի։

որոյ ջրուճեցին գետք զերկիր նորա

ազգ յուսացեալ

## ԳԼ. ԺԹ.

Տեսիլ Եգիպտացւոց։

1 Ահաւասիկ Տր նստեալ 'ի վր թեթև ամպոյ. եկեսցէ յԵգիպտոս. և շարժեսցին ձեռագործքն Եգիպտացւոց յերեսաց նորա. և սիրտք նոցա լքցին 'ի նս։ 2 *Եւ յարիցեն Եգիպտացիքն 'ի վերայ Եգիպտացւոցն. և տայցեն պատերազմ այր ընդ եղբօր՝ և այր ընդ ընկերի. քաղաք ընդ քաղաքի. և օրէնք ընդ օրէնս։ 3 *Եւ խռովեսցին ոգիքն Եգիպտացւոց յանձինս իւրց. և զխորհուրդս նոցա ցրեցից. և հարցանիցեն զդիսն իւրց. և զպատկերս իւրց. և զգետնակոչս՝ և զվհուկս։ 4 *Եւ մատնեցից զԵգիպտոս 'ի ձեռս արանց՝ տերանց խստասրտաց. և թագաւորք խիստք տիրեսցեն նոցա. այսպէս ասէ Տր զօրութեանց։ 5 *Եւ արբցեն Եգիպտացիքն զջուրն ծովափնեայս. քանզի գետն նուաղեսցի. և ցամաքեսցի։ 6 *Եւ պակասեսցի գետն, և ջրադարձք գետոյն. և ցամաքեսցի ամենայն ժողով ջուրցն. և յամենայն մարգագետինս՝ և յամուրս եղեգան և պրտունոյ և 'ի լուամարգս։ 7 *Եւ ամենայն կանաչ՝ որ շուրջ զգետովն իցէ. և ամ սերմանավար. որ ընդ գետոյն ջրով վարեսցի՝ խորշակահար ցամաքեսցի։

8 *Եւ տրտմեսցին ձկնորսքն. և յոգւոց հանիցեն ամենայն կարթընկեցք գետոյն. ցանցորդք և ուռկանաւորքն սուգ առցեն։ 9 *Ամաչեսցեն կտաւագործքն բարակամանք. և որք գործեն զբեհեզն։ 10 *Եւ եղիցին Հարտարքն ամ լի տրտմութբ։ և ամ տարազագործք նոցա տրտմեսցին. և ցաւեսցին սիրտք իւրեանց։ 11 *Եւ յիմարասցին իշխանք տայանու՝ իմաստունք խորհրդականք թագաւորին. և յիմարեսցին խորհուրդք նց. զիարդ ասիցէք ցարքայն՝ թէ որդիք իմաստնոց եմք մեք. և որդիք թագաւորաց, որք 'ի սկզբանէն էին։ 12 *Արդ՝ ուր են իմաստունք քո. պատմեսցեն քեզ՝ և ասասցեն. զինչ խորհուրդ խորհեցաւ Տր զօրութեանց 'ի վերայ Եգիպտոսի։ 13 *Պակասեցան իշխանք տայանու. և բարձրացան իշխանքն մեմփացւոց. և մոլորեցուցին զԵգիպտացիսն ըստ ազգաց ազգաց իւրեանց։ 14 *Քանզի Տր խառնեաց նոցա զոգի մոլորութե. և մոլորեցուցին զԵգիպտոս յամ գործս իւրեանց. որպս մոլորիցի արբեալ՝ և որ փսխիցէ։ 15 *Եւ մի ևս եղիցի Եգիպտացւոցն գործ՝ մի յետս, և մի յառաջ. և մի 'ի սկզբան՝ և մի 'ի կատարածի։

16 *Յաւուր յայնմիկ Եգիպտացիք իբրև զկանայս դողացեալք. և զարհուրեալք յերեսաց ձեռին Տն զօրութեանց՝ զոր արկցէ ինքնին 'ի վերայ նոցա։ 17 *Եւ եղիցի երկիրն Հրէաստանի՝ 'ի խրտուիլ Եգիպտացւոց. և ամ որ անուանիցէ զանուն երկրին առ նոսա. զարհուրեսցին վս խորհրդոյն, զոր խորհեցաւ Տր զօրութեանց 'ի վերայ նր։ 18 *Յաւուր յայնմիկ եղիցին հինգ քաղաքք յերկրին Եգիպտացւոց. որք խօսիցին զքանանացւոց լեզուն. և երդնուցուն յանուն Տն զօրութեանց. քաղաք ասեդեկ կոչեսցի մի քաղաք։ 19 *Յաւուր յայնմիկ եղիցի սեղան Տն յերկրին Եգիպտացւոց. և արձան կանգնեալ Տն 'ի սահմանս նր։ 20 *Եւ եղիցի 'ի նշան յաւիտենից Տն յերկրին Եգիպտացւոց. զի աղաղակեսցեն առ Տր վասն նեղութե իւրեանց. և առաքեսցէ նոցա Տր այր մի՝ որ փրկեսցէ զնոսա՝ և դատաստանաւ փրկեսցէ զնս։ 21 *Եւ ծանիցի Տր Եգիպտացւոցն. և ծանիցեն Եգիպտացիքն զՏր յաւուր յայնմիկ. և մատուսցեն զոհս և պատարագս՝ և դիցեն ուխտս Տն և կատարեսցեն։ 22 *Եւ հարցէ Տր զԵգիպտացիսն մեծամեծ հարուածովք. և բժշկելով բժշկեսցէ զնոսա. և դարձցին առ Տր՝ և լուիցէ նոցա՝ և բժշկեսցէ զնոսա։ 23 *Յաւուր յայնմիկ եղիցի ճանապարհ Եգիպտացւոց առ Ասորեստանեայսն. և մտցեն Ասորեստանեայքն յԵգիպտոս. և Եգիպտացիքն երթիցեն առ Ասորեստանեայսն. և ծառայեսցեն Եգիպտացիքն Ասորեստանեայցն։ 24 *Յաւուր յայնմիկ եղիցի երրորդ իէլ 'ի մէջ Եգիպտացւոցն և 'ի մէջ Ասորեստանեայցն. օրհնեալ յերկրին։ 25 *Զոր օրհնեաց Տր զօրութեանց՝ և ասէ՝ օրհնեալ եղիցի ժողովուրդ իմ որ յԵգիպտոս. և որ յԱսորեստանեայսն. և ժառանգութի իմ Իսրայէլ։

## ԳԼ. Ի.

1 Յամաւուր յորում եկն Թարթան յԱզովտոս։ 'ի Յամ ժամանակի զի առաքեաց Սարգոնայ արքայէ յորում Ասորեստանեայց և ետ պատերազմ ընդ Ազովտոսայ. և էառ զնա։ 2 *Յայնժամ խօսեցաւ Տր ընդ Եսայեայ որդւոյ Ամովսայ՝ և ասէ։

Երթ՝ և 'ի բաց հան զքուրձդ 'ի միջոյ քումմէ. և լոյծ զհողաթափդ յոտից քոց։ և արար այնպէս. և գնայր մերկ և բոկ։ 3 *Եւ ասէ Տր. զոր օրինակ գնայ ծառայ իմ Եսայի մերկ և բոկ՝ այդ ամ զերիս ամս եղիցին նշանք և արուեստք Եգիպտացւոցդ. և

Եթէ

եթեովպացւոց ։ 4 * Եւ 'ի միտ առցեն՝ թէ այդպէս տարցէ արքայն ասորես_տանեայց 'ի գերութի զեգիպտացիսն՝ և զեթեովպացիսն • զերիտասարդս՝ և զծերս՝ մերկս և բոկս • խայտառակեալ զամօթ եգիպտացւոցն ։ 5 * Եւ ամաչես_ցեն 'ի պարտութի մատնեալ եգիպ_տացիքն 'ի վերայ եթեովպացւոցն • յոր յուսացեալ էին եգիպտացիքն • որք էին նց փառք ։ 6 * Եւ ասասցեն բնա_կիչք կղզւոյդ այդմիկ՝ յաւուր յայնմիկ ։ աՀաւասիկ մեք յուսացեալքաք ապաս_տան լինել 'ի սոցա յօգնականութի • և սոքա ոչ կարացին ապրեցուցանել՝ և ոչ զանձինս իւրեանց յարքայէն ասո_րեստանեայց • և մեք զիա՞րդ ապրիցուք ։

## ԳԼ. ԻԱ.

1 Տեսիլ անապատին ծովու ։

Իբրև մրրիկ ընդ անապատ անցցէ • յանապատէ եկեալ յերկրէ ։ աՀա_գին է տեսիլն ։ 2 * Եւ խստութի պատ_մեցաւ ինձ ։ որ արՀամարՀելոցն է՝ ար_Համարհէ ։ և որ անօրինելոցն է՝ անօրի_նի ։ 'ի վր իմ Հասին եղիմացիք • և Հրեշ_տակք պարսից գան 'ի վր իմ • արդ Հե_ծեծեցից՝ և մխիթարեցից զանձն իմ ։ 3 * Վս այսորիկ լցաւ մէջ իմ դողութբ • և երկունք կալան զիս իբրև զծննդա_կան • ոլորեցայ՝ զի մի՛ լուայց • խռո_վեցայ, զի մի՛ տեսից ։ 4 * Սիրտ իմ դար_ձաւ 'ի մոլորութի • և անօրէնութիւն գեռ ընկղմէր զիս • անձն իմ եկաց 'ի դողութն ։ գիտեա՛ զգիտաւորութիւն քո ։ 5 * Պատրաստեա՛ զսեղան • կե՛ր արբ • արի՛ք իշխանք • պատրաստեցէ՛ք զվա_Հանս ։ 6 * Զի այսպէս ասաց ցիս Տր • գնա՛ դու անձամբ անձին դէտ լինիջիր • և զոր ինչ տեսանիցես՝ պատմեսջիր ։ 7 * Եւ տեսի Հեծեալս երկուս ։ Հեծեալ մի իշոյ • և Հեծեալ մի ուղտու ։ լսել լուր բազում ունկնդրութբ • և կոչեա՛ 8 զուրիայ 'ի դիտանոցդ ասէ Տր ։ * ‖Եւ կացի զտիւն ողջոյն՝ և զգիշերն ամ 'ի վր բանակին ։ 9 * Եւ տեսի • զի գայր նոյն Հեծեալ երկձի պատասխանի ետ՝ և ասէ • ‖ անկաւ՝ կործանեցաւ բաբե_լոն • և ամ պատկերք նր • և ձեռագործք իւր կործանեցան յերկիր ։ 10 * Լուարուք մնացորդք՝ և ցաւագնեալք • լուարուք՝ զոր լուայ 'ի Տէ զօրութեց • զոր Ած Իղի պատմեաց մեզ ։ 11 * Տեսիլ Իդումայեցւոց • Առ իս կոչեա՛ 'ի սեիր լեռնէ՝ պա_Հեցէ՛ք զմաՀարձանս ։ 12 * ՊաՀեցից զ առաւօտն և զգայդ ։ եթէ խնդրեսցես • խնդրեսջիր • և առ իս բնակեսջիր ։ 13 * Աղաղակ 'ի վերայ Արաբացւոց ։ Ընդ երե_կոյս ննջեսցես յանտառի 'ի Ձմնապար_Հին Դեդանիմ ։ 14 * Բերէ՛ք ջուր ընդ ա_ռաջ ծարաւեաց • բնակիչք Թեմա_նու ։ Հացի՛ւ ը առա՛ջ ելէք փախստէից ։ 15 * Վս բազմութե սպանելոցն • և վասն բազմութե մոլորելոցն • և վս բազմու_թե սրոյն • և վասն բազմութե աղե_ղանցն լարելոց • և վս բազմութե ան_կելոցն 'ի պատերազմի ։ 16 * Զի այսպէս ասաց ցիս Տր • ամ մի ևս • իբրև զամ_րի վարձկանի • և պակասեսցին փառք որդւոցն կեդարու ։ 17 * Եւ մնացորդք աղեղնաւորաց զօրաւորաց որդւոցն կեդարու եղիցին սակաւաւորք • զի Տր Ած Իղի խօսեցաւ ։

Ամբակ. 2. 1.

Յեր. 51. 8.

Յայտ. 14. 8.



## ԳԼ. ԻԲ.

1 Պատգամ ձորոյն սիոնի ։ պեւլէան

1 Ո՞ր դու՝ զի՞ ընդ քեզ՝ զի ելէք դուք այժմ ամենեքեան 'ի տանիս նան_րութե ։ 2 * Լցաւ քաղաքդ գուժկանօք • քաղաքդ պերճացեալ ։ վիրաւորք քո ոչ վիրաւորք սուսերի • և ոչ դիակունք քո՝ դիակունք պատերազմաց ։ 3 * Ամ իշխանք քո փախստեայք ։ և կալանա_ւորք քո կապեալք սաստկութբ • և Հզօրք քո առ Հասարակ կապեցան՝ բա_4 ցէ 'ի բաց փախստականք ։ * Վս այսո_րիկ ասացի՝ թո՛յլ տուք ինձ՝ լացից դառ_նապէս • մի՛ բռնադատէք մխիթարել զիս 'ի վր բեկման դստեր ազգի իմոյ ։ 5 * Զի օր խռովութե՝ և կորստեան՝ և կոխման • և մոլորութե 'ի Տէ զօրութեց 'ի ձորն սիոնի ։ մեծ և փոքր առ Հա_սարակ մոլորեալք դանդաչեն 'ի վր լե_6 րանց ։ * Իսկ եղիմացւոցն առեալ զկա_պարճս • Հեծեալք յերիվարս • և դունդք 7 ձակատելոյ ։ * Եւ ընտիր ընտիր ձորք քո լցցին կառօք • և Հեծեալք երիվա_8 րօք խցցեն զդրունս քո ։ * Եւ կործա_նեսցեն զդրունս յուդայ • տեսցեն յաւ_ուր յայնմիկ զընտիր ընտիր ապարանս 9 քաղաքին ։ * Եւ յայտնեսցեն զծա_ծուկս ապարանից բարձանցն դաւ_թի ։ և տեսին՝ զի բազումք էին ։ և զի դարձուցին զՀին ջրմուղն 'ի քա_10 ղաքն ։ * Եւ զի քակեցին զապարանս երմի՝ յամրութի պարսպաց քաղաքին ։ 11 * Եւ Հանիք ձեզ ջուր 'ի մէջ երկուց պարսպաց 'ի ներքսագոյն քան զՀին ջրմուղն ։ և ոչ Հայեցայք յայն՝ որ ա_րարն զնա 'ի սկզբանէ • և զՀաստիչն նր 12 'ի Հեռուստ ոչ ծանեայք ։ * Եւ կոչեաց Տր սաբաւովթ յաւուր յայնմիկ լա_լումն՝ և կոծումն՝ և աշխարումն՝ և 13 գերծումն՝ և զգածումն քրձի ։ * Եւ նոքա արարին ուրախութի և ցնծութի ։

պեւլէան

սպանանէին զզուարակս. և զենուին ոչխարս. զի կերիցեն միս՝ և արբցեն զգինի։ Եւ ասասցեն՝ կերիցուք՝ արբցուք՝ քանզի վաղիւ մեռանիմք։ 14 *Եւ այն յայտնեալ կայ յականջս Տն̄ զօրութեանց. զի ոչ թողուցուն ձեզ մեղքդ այդոքիկ՝ մինչև մեռանիցիք՝ ասէ Տր̄ զօրութեանց։ 15 *Այսպէս ասէ Տր̄ զօրութեանց. գնա դու՝ և մուտ՝ ՚ի դիւան անդր առ Սոմնաս համակերձապետ. և ասասցես նմա. 16 *Զի՞ եկեալ ես դու այսր. և զի՞նչ խնդիր է քո աստ. զի փորեցեր դու քեզ աստ գերեզման. և արարեր քեզ յարկ ՚ի վիմիդ։ 17 *Արդ հաւադիկ Տր̄ զօրութեանց հանցէ, և սատակեսցէ զքեզ՝ այր դու. և հանցէ զպատմուճան քո։ 18 *Եւ զպսակդ փառաց քոց. և ընկեսցէ զքեզ յերկիրն մեծ՝ և յանչափ. և անդ մեռանիցիս։ և արասցէ զկառս քո գեղեցիկս յանարգութիւն. և զտուն իշխանութեան քոյ ՚ի կոխումն։ 19 *Եւ մերժեսցիր ՚ի պետութենէ քումմէ. և ՚ի հաստատութենէ քումմէ։ 20 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ կոչեցից զծառայ իմ զԵղիակիմ քեղկեայ։ 21 *Եւ զգեցուցից նմա զպատմուճանդ քո. և տաց նմա զպսակդ քո ճոխութեան. և տաց ՚ի ձեռս նր̄ զհազարապետութիւնդ քո. և եղիցի իբրև զհայր բնակչացդ Երուսաղեմի. և բնակչացդ յուդայ։ 22 *Եւ տաց զփականս դաւթի նմա. իշխեսցէ, և ոչոք իցէ որ նմա ընդդէմ դառնայցէ։ 23 *Եւ կացուցից զնա իշխան ՚ի հաւատարիմ տեղւոջ. և եղիցի յաթոռ փառաց տան հօր իւրոյ։ 24 *Եւ եղիցին ՚ի նա յուսացեալք ամ̄ փառաւորք տան հօր իւրոյ. ՚ի փոքրկանց մինչև ցմեծամեծս. և զամ̄ անօթս ՚ի փոքունց մինչև յանօթս ադանօթայ։ բացցէ՝ և ոչոք իցէ որ փակիցէ. և փակեսցէ, և ոչոք իցէ որ բանայցէ. և եղիցին կախեալք զնմանէ։ 25 *Յաւուր յայնմիկ. այսպէս ասէ Տր̄ զօրութեանց. շարժեսցի մարդ հաստատուն ՚ի հաւատարիմ տեղւոջէ. անկցի՝ և կործանեսցի. և բարձցին փառք նր̄՝ ՚ի նմանէ. զի Տր̄ խօսեցաւ։

Իմաստ. 2. 6. 1. Կորն. 15. 32. Յոբ. 12. 14. Յայտ. 3. 7.

## ԳԼ: ԻԳ.

Պատգամ Տիւրոսի։

1 Ողբացէք նաւք կարկեդոնացւոց. զի կորեան, և ոչ ևս գային յերկրէ կիտացւոց. վարեցան ՚ի գերութիւն։ 2 *Ում նմանեցան բնակիչք կղզւոյդ այդորիկ. վաճառականք փիւնիկեցւոց՝ որք անցանէին ընդ ծով և ընդ ջուրս բազումս։ 3 *Զաւակ դնողացն իբրև զարդիւնս ամբարանոց ամփոփելոյ. վաճառականք ազգացն։ 4 *Զամօթ լեր սիդոն՝ ասէ ծով. և զօրութիւն ծովու ասասցէ. ո՞չ երկնեցի. և ո՞չ ծնայ. ո՞չ սնուցի երիտասարդս. և ո՞չ բարձրացուցի կուսանս։ 5 *Իսկ յորժամ լուր լիցի յերկիրն եգիպտոսի. ցաւք կալցին զնա վա̄ տիւրոսի։ 6 *Երթայք ՚ի կարկեդոն. ողբացէք բնակիչք կղզւոյդ այդորիկ։ 7 *Ոչ այդ իսկ էր ամբարտաւանութիւն ձեր ՚ի սկզբանէ. մինչ չև մատնեալ էր նր̄. և վարեսցի նա յոտից իւրոց ՚ի պանդխտութիւն հեռաւոր։ 8 *Իսկ ո՞ խորհեցաւ զայս ՚ի վերայ տիւրոսի. մի թէ ՚ի վայր ինչ էր՝ կամ տկար ոք. նա՝ վաճառականք նր̄ փառաւորք քանանացւոց. և առ գնօղք նր̄ իշխանք երկրի։ 9 *Տր̄ զօրութեանց խորհեցաւ քակել զամ̄ ամբարտաւանութիւն փառաւորաց. և անարգել զամ̄ պատուականս ՚ի վերայ երեսաց երկրի։ 10 *Գործեա՛ զերկիր քո. զի այսուհետև ոչ ևս գան նաւք ՚ի կարկեդոնայ։ 11 *Եւ ձեռն քո ոչ ևս զօրասցի ՚ի վերայ ծովու. որ զայրացուցանէիր զթագաւորս. Տր̄ զօրութեանց հրամայեաց վասն քանանու կորուսանել զզօրութիւն նր̄։ 12 *Եւ ասասցեն՝ թէ այսուհետև մի ևս յաւելուցուք թշնամանել և զրկել զդուստր սիոնի. այլ յոտնկաց՝ և անց ընդ ծով. և թէպէտ և դիմեսցես ՚ի կիտիս. և ոչ անդ լիցի քեզ հանգիստ։ 13 *Եւ եթէ յերկիրն քաղդէացւոց. սա կայն և այն աւերեալ է յասորեստանեայցն. և անդ դուլ և դադար քեզ ոչ գտանիցի. էարկ զհիմն նր̄ սիհիմ. կանգնեաց զմահարձանս նորա. և յաբոյց զաշտարակս նր̄. արդ՝ անկաւ՝ կործանեցաւ պարիսպ նորա։ 14 *Ողբացէք նաւք կարկեդոնացւոց. զի կորեաւ ամրութիւն ձեր։ 15 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ. լքեալ լիցի տիւրոս ամս եօթանասուն իբրև զժամանակ թագաւորի միոյ. իբրև զժամանակ կենաց մարդոյ միոյ. և յետ ամաց եօթանասնից եղիցի ծուր իբրև երգ պոռնկի միոջ։ 16 *Առ քնար՝ յածեա՛ց՝ կածեա՛ց լքեալ քաղաք պոռնկութեան. քա՛ջ հար. յաճախեա՛ երգել. զի քո յիշատակ մնասցէ։ 17 *Եւ եղիցի յետ ամաց եօթանասնից, այց արասցէ ա̄ծ ծուրայ. և միւսանգամ՝ անդրէն ՚ի նոյն յառաջին կարգն հաստատեսցի. և եղիցի ՚ի նմա վաճառ ամ̄ թագաւորաց տիեզերաց. ընդ ամենայն երեսս երկրի։ 18 *Եւ եղիցի վարձ վաճառի Տն̄ նուիրեալ. ոչ անձանց ինչ ժողովեսցեն, այլ բնակելոցն առաջի Տն̄ եղիցին ամենայն վաճառք նորա. ուտել՝ և ըմպել՝

ըմպել՝ և ուրախ լինել 'ի նշան յիշատակաց առաջի Տն̃ :

## Գլ: ԻԴ:

1 Ահաւադիկ Տր̃ ապականեսցէ ըզ տիեզերս . և աւերեսցէ զնա . և տապալեսցէ զյարկս նորա . և ցրուեսցէ զբնակեալսն 'ի նմա : 2 * Եւ եղիցի ժողովուրդն իբրև զքահանայն . և ծառայն իբրև զՏր̃ . և աղախինն իբրև զտիկինն . և եղիցի գնողն իբրև զվաճառականն . և փոխատուն իբրև զփոխառուն . և պարտապանն իբրև զպարտատէրն : 3 * Ապականելով ապականեսցի երկիր . և յափշտակութեամբ յափշտակեսցի երկիր . զի բերան Տն̃ խօսեցաւ զայս : 4 * Սուգ էառ՝ և կործեցաւ երկիր . կործանեցան, և ապականեցան տիեզերք : սուգ առին բարձունք երկրի : 5 * Իսկ երկիր անօրինեցաւ բնակչօք իւրովք . վասն զի անցին զօրինօք Տն̃ . և փոխեցին զհրամանս նր̃ . և ցրեցին զուխտն յաւիտենից : 6 * Վն̃ այսորիկ նզովք կերիցեն զերկիր . զի մեղան բնակիչք նորա . վասն այնորիկ տնանկք եղիցին բնակիչք նր̃ . և մնասցեն մարդիկք սակաւաւորք : 7 * Սուգ առցէ գինի . սուգ առցէ այգի . յոգւոց հանցեն ամ̃ խրախճանք յանձինս իւրեանց : 8 * Լռեցին ուրախութիւնք թմբկաց . լռեցին հպարտութիւնք և մեծութիւնք ամպարշտաց : լռեցին ձայնք քնարաց : 9 * Յամօթ եղեն . և ոչ ըմպեցին զգինի . դառնացաւ ցքի ըմպելեաց : 10 * Աւերեսցան քաղաքք ամ̃ . դրունք ապարանից կարկեսցան . զի ոչոք էր, որ մտանէր : 11 * Ողբացէք 'ի վերայ գինւոյ ընդ ամ̃ տեղիս , լռեաց ամ̃ ուրախութիւն . պարտեցաւ ամ̃ ուրախութիւն երկրի : 12 * Լքցին քաղաքք աւերակք : և ապարանք մնացեալք կորիցեն : 13 * Այս ամ̃ եղիցի յերկրի 'ի մէջ հեթանոսաց . զորօրինակ եթէ ձիւթքաղ ոք առնիցէ զձիթենի . այնպէս ձիւթքաղ առնիցեն զնա̃ . և եթէ դադարեսցին կութք : 14 * Նոքա մեծաձայն աղաղակեսցեն . բայց մնացեալք յերկրի ուրախ լիցին միանգամայն 'ի փառսն Տն̃ . և խռովեսցին ջուրք ծովու : 15 * Վն̃ այսորիկ փառք Տն̃ 'ի կղզիս ծովու . և անուն Տն̃ փառաւորեսցի : Տր̃ Ա̃ծ Իղի : 16 * 'Ի ծագաց երկրի արուեստս լուաք . յոյս բարեպաշտին . և ասիցեն՝ խորհուրդ իմ ինձ և իմոյն . վա̃յ արհամարհողաց . որք արհամարհեն . և արհամարհանօք արհամարհիցեն զօրէնս : 17 * Ա̃հ՝ գուբ՝ և որոգայթ 'ի վերայ ձեր բնակիչք երկրի : 18 * Եւ եղիցի՝ որ փախիցէ յահէ անտի՝ անկցի 'ի գուբն . և որ ելանիցէ 'ի գբոյն . ըմբռնեսցի յորոգայթն . զի պատուհանք բացան երկնից . և շարժեսցին հիմունք երկրի : 19 * Խռովելով խռովեսցի երկիր . և տարակուսելով տարակուսեսցի երկիր . 20 (խոնարհեցաւ) : * Շարժելով շարժեսցի երկիր իբրև զտաղաւար մրգապահաց . իբրև զարբեալն և ըս խաղակ գլորեսցի . և մի կարասցէ կանգնիլ . զի ստատկացաւ 'ի վ̃ա նր̃ անօրէնութիւն : 21 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ածցէ Ա̃ծ 'ի վ̃ա զարդուն երկնից զձեռն իւր . և 'ի վերայ թագաւորաց երկրի՝ որք 'ի վերայ երկրի : 22 * Եւ ժողովեսցեն զժողովս նորա 'ի կապանս . և պաշարեսցեն յամուրս . և յետ բազում ազգաց այցելութիւն եղիցի նոցա : 23 * Եւ հալեսցի աղիւսն . և կործանեսցի պարիսպն . զի թագաւորեսցէ Տր̃ 'ի լերինն Սիոնի և յԵրուսաղէմ . և առաջի ծերոցն փառաւորեսցի :

## Գլ: ԻԵ:

1 Տր̃ Ա̃ծ իմ փառաւոր արարից ըզ քեզ . օրհնեցից զանուն քո . զի արարեր սքանչելի իրս . զխորհուրդն առաջին զճշմարիտն : 2 * Այո̃ Տր̃ . զի եդեր զքաղաքս 'ի հողաբլուրս . և զքաղաքս ամուրս 'ի կործանումն հիմանց նոցա . քաղաք ամպարշտաց յաւիտենից մի՛ շինեսցի : 3 * Վն̃ այնորիկ օրհնեսցէ զքեզ ժողովուրդ աղքատ : և քաղաքք մարդկան զրկելոց օրհնեսցեն զքեզ : 4 * Զի եղեր ամ̃ քաղաքի խոնարհի օգնական : և տրտմելոց վ̃ն կարօտութեան յարկ ապաւինի . 'ի մարդոց չարաց փրկեցեր զնո̃ : 5 * Ապաւէն ծարաւեաց . և ոգի մարդկան զրկելոց իբրև մրդոց թալկացելոց ծարաւեաց 'ի Սիոն . 'ի մարդոց ամպարշտաց որոց մատնեցեր զմեզ : 6 * Եւ արասցէ Տէր սաբաւօթ 'ի լերինս յայսմիկ ամ̃ հեթանոսաց . արբցեն զուրախութիւն . արբցեն զգինի . օծցին իւղով 'ի մրրոյ պարզելոյ : 7 * Եւ ընկլցին 'ի լերինս յայսմիկ . պատմեա̃ զայս ամ̃ հեթանոսաց . զի այս խորհուրդ է 'ի վերայ ամ̃ հեթանոսաց : 8 * Զօրացաւ մահ՝ և եկուլ . և դարձեալ՝ էհատ Ա̃ծ զամ̃ արտօսր յամ̃ երեսաց . և զնախատինս ժողովրդեանն եբարձ յամ̃ երկրէ . զի բերան Տն̃ խօսեցաւ : (զտապն հոլանեաւ ամպոյ . և զբազուկս հզօրաց խոնարհեցուսցէ :) 9 * Եւ ասասցեն յաւուր յայնմիկ . ահաւասիկ Տէր Ա̃ծ մեր , յոր յուսացեալ էաք . և ապրեցուսցէ զմեզ . զի սա է Տր̃ . և սպասէաք սմա .

Մեծ. 4. 9.

ըմպողաց

զորբէալ նախաղաչ

և յամօթ լիցի լուսինն . և պատկառեսցի արեգակն երբ Թագաւորեսցէ

Յայտ. 7. 17. և 21. 4.

Երեմ. 48. 44.

և ցնծասցուք՝ և ուրախ եղիցուք 'ի փրկութեն մերում։ 10 *Զի տացէ մեզ զհանգիստ Ած 'ի լերինս յայսմիկ. և լիցի կոխան մովաբացին. զոր օրինակ կոխիցեն ոք զկալ կամնասայլիւք։ 11 *Եւ հանգուցանիցէ զձեռս իւր. նոյնպէս և նա թշնամուացոյց զնոսա 'ի կորուսանել. և խոնարհեցուսցէ զբարձրութիւն նորա. յոր արկանէր զձեռն իւր։ 12 *Եւ զբարձրութիւն ապաստանի պարսպացն քոց խոնարհեցուսցէ. և իջցեն մինչև յատակս։

## ԳԼ. ԻԶ.

1 Յաւուր յայնմիկ երգեսցեն զերգս զայս յերկրին հրէաստանի. Թէ ահաւասիկ քաղաքս զօրացեալ և փրկութիւն մեր. կանգնեսցէ պարիսպս և պատուարս։ 2 *Բացէք զդրունս ձեր. և մտցէ ժողովուրդ. որ պահէ զարդարութիւն։ 3 *Եւ պահէ զճշմարտութիւն. և վերակացու ճշմարտութեան պահէ զխաղաղութիւն, զխաղաղութիւն։ 4 *Զի 'ի քեզ յուսով յուսացաք Տէր մինչև յաւիտեան։ 5 *Որ խոնարհեցուցեր՝ իջուցեր զբնակիչս բարձանց. զքաղաքս հզօրս կործանեսցես՝ և իջուսցես զնոսա մինչև յատակս։ 6 *Կոխեսցեն զնոսա ոտք հեզոց և խոնարհաց. գնացք տնանկաց։ 7 *Ճանապարհք բարեպաշտաց ուղիղք են՝ դիւրեալք և պատրաստեալք են ճանապարհք ածապաշտից։ 8 *Զի ճանապարհք Տն իրաւունք են. յուսացաք յանուն քո՝ և 'ի յիշատակս ցանկութե ոգւոց. որում ցանկացաւ անձն մեր։ 9 *Ի գիշերաց կանխէ հոգի իմ առ քեզ Ած. զի լոյսք են հրամանք քո 'ի վերայ երկրի. զարդարութիւն ուսարուք բնակիչք երկրի։ 10 *Զի կարկեցաւ ամպարիշտն. և ամ որ ոչ ուսանի զարդարութիւն յերկրի, ոչ արասցէ զճշմարտութիւն. բարձցի ամպարիշտն, զի մի տեսցէ զփառսն Տն։ 11 *Տր բազուկ քո բարձր՝ և ոչ ծանեան. ծանիցեն՝ և ամաչեսցեն. նախանձ առցէ զժողովուրդն անխրատ. և այժմ հուր զհակառակորդս կերիցէ։ 12 *Տր Ած մեր՝ տուր մեզ զխաղաղութիւն. զամ ինչ հատուցեր մեզ։ 13 *Տր Ած մեր՝ ստացիր զմեզ. Տր բաց 'ի քէն զայլոք ոչ գիտեմք. և զանուն քո անուանեմք։ 14 *Իսկ մեռեալք ըզ կեանս ոչ տեսցեն. և բժիշկք ոչ յարուսցեն. վն այսորիկ ածեր՝ սատակեցեր. կորուսեր զամենայն արու նոցա։ 15 *Յաւել նոցա Տր չարիս. յաւել չարիս 'ի վերայ փառաւորաց երկրի. յերկարեցեր ամենայն ծագաց երկրի։ 16 *Տր 'ի նեղութե յիշեցաք զքեզ. զի փոքր մի նեղութիւն է խրատ քո մեզ։ 17 *Եւ որպ որ երկնիցէ մերձ 'ի ծնանիլ. և առ ցաւս իւր ճչիցէ. այնպէս եղեաք սիրելոյ քում, վասն երկիւղի քո Տր։ 18 *Յղացաք՝ երկնեցաք՝ և ծնաք. զհոգի փրկութե քո արարաք 'ի վերայ երկրի. ոչ ևս կործանիցուք մեք. այլ կործանեսցին բնակիչք երկրի։ 19 *Յարիցեն մեռեալք քո. և կանգնեսցին՝ որք իցեն 'ի գերեզմանս. և ուրախ լիցին յերկրի. զի ցօղն՝ որ 'ի քէն է՝ բժշկութիւն է նոցա. բայց երկիր ամպարշտաց կործանեսցի։ 20 *Գնա ժողովուրդ իմ՝ մուտ 'ի շտեմարանս քո. փակեա զդուրս քո. թաքիր առ ժամանակ մի, մինչև անցցէ բարկութիւն Տն։ 21 *Զի ահաւասիկ Տր 'ի սրբութէ իւրմէ ածցէ զբարկութի 'ի վերայ բնակչաց երկրի. և յայտնեսցէ երկիր զարիւն իւր. և ոչ ծածկեսցէ զսպանեալսն։

Միք. 1. 3.

## ԳԼ. ԻԷ.

1 Յաւուր յայնմիկ ածցէ Ած զսուրն սուրբ և զմեծ՝ և զհզօր՝ 'ի վր վիշապ օձին փախուցելոյ. և 'ի վերայ վիշապ օձին կամակորի. և սպանցէ զվիշապն 'ի մէջ ծովուն։ 2 *Յաւուր յայնմիկ այգի վայելուչ ցանկալի տիրել 'ի վերայ նր։ 3 *Ես քաղաք ամուր, քաղաք զուր պաշարեալ՝ արբուցից զնա. զի առցի 'ի գիշերի. և 'ի տուէ կործանեսցի պարիսպն։ 4 *Զի ոչ էր՝ որ ձեռնամուխ լինէր 'ի նա. ո՞ դիցէ զիս պահել զոձ արտոյ յագարակի. վն այսր պատերազմողի անարգեցի զնա. այսուհետև վասն այսորիկ արար Տր զամ ինչ՝ զոր կարգեաց. այրեցաք աստ։ 5 *Բողոքեսցեն բնակիչք նորա. արասցուք ըն նմա զխաղաղութիւն։ 6 *Ժողովեալքս որդիք յակոբայ՝ նորատունկ բղխեսցին. ծաղկեսցի իէլ. և լցցին տիեզերք պտղով նր։ 7 *Մի թէ որպ նայն էհար. սա այնպէս վիրաւորեսցի. կամ որպէս նայն սպան, սա այնպէս սատակեսցի։ 8 *Պատերազմաւ՝ և նախատանօք արձակեսցէ զնոսա. ոչ դու էիր՝ որ խորհէիր խստացեալ մտօք սպանանել զնս ոգւով բարկութե։ 9 *Վն այնորիկ բարձցի անօրէնութիւն յակոբայ. և այս է օրհնութիւն նորա. յորժամ բարձից 'ի նմանէ զմեղս նր. 'ի ժամանակի յորում մանրեսցեն իբրև զփոշի մանր զամենայն քարինս մեհենիցն քոց. և մի ևս մնասցեն գործք պաշտամանց նց։ 10 *Եւ այլ կոտորեսցին իբրև զմայր 'ի փայտահարաց. և որ 'ի չենն մնասցէ՝ եղիցի իբրև զհօտ մակաղեալ.

ղեալ. և ոչ խաչն լքեալ. և եղիցին 'ի բազում ժամանակս յաւիտենից. և անդ հանգիցեն: 11 *Եւ յետ բազում ժամանակաց ոչ գտցի 'ի նմա դեղ դալար. զի ցամաքեցաւ: ով կանայք՝ որք դիմեալ գայք 'ի հանդիսէ՝ յառաջ մատիք. զի ոչ եթէ ժողովուրդ է՝ յորում գոյ իմաստութիւն: վասն այսորիկ մի գթասցի 'ի նոսա Տէր՝ որ արարն զնոսա. և մի, որ ստեղծն զնոսա, ողորմեսցի նոցա: 12 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ. արգել արկցէ Տէր 'ի փոսոյ գետոյն մինչև 'ի կողմանս ռինոկորայ. բայց դուք մի մի ժողովեցէք զորդիսդ իսրայէլի: 13 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ հարցեն զփող աւագ փողոյ: և եկեսցեն ցրուեալքն յերկրին ասորեստանեայց. և կորուսեալք յերկրին եգիպտացւոց. և երկիր պագցեն Տեառն 'ի վերայ լերինն սրբոյ յերուսաղէմ:

## ԳԼ. ԻԸ.

1 Վայ 'ի պսակդ հպարտութեան վարձկանացդ եփրեմի. ծաղիկ թօթափեալ 'ի փառաց. 'ի վերայ գլխոյ լերինդ թանձրացելոյ. որք արբեալք էք և ոչ 'ի գինւոյ: 2 *Ահաւասիկ սաստիկ և խիստ բարկութիւն Տեառն. իբրև զկարկուտ իջեալ. և ոչ գուցէ յարկ. և իբրև բռնութիւն հեղեղաց ջուրց բազմաց. որ ողողեսցէ զերկիր. և արասցէ հանգիստ երկրի ձեռօք և ոտիւք: 3 *Եւ կոխան լիցի պսակն հպարտութեան վարձկանացդ եփրեմի: 4 *Եւ եղիցի ծաղիկն յուսոյ թօթափեալ 'ի փառաց անտի 'ի վերայ գլխոյ լերինն բարձու: իբրև զվաղահասութիւն թզոյ. զոր տեսեալ ուրուք մինչչև 'ի ձեռն առեալ՝ կամիցի կլանել: 5 *Յաւուր յայնմիկ եղիցի Տէր զօրութեանց՝ պսակ յուսոյ գործեալ 'ի փառս մնացելոց ժողովրդեանն: 6 *Զի մնասցեն ոգւով դատաստանի. և դատաստանաւ և զօրութեամբ արգելուցու 'ի ծուլութենէ: 7 *Զի նոքա գինւով մոլորեալք են. մոլորեցան վասն ցքւոյն. քահանայք՝ և մարգարէք յիմարեցան վասն ցքւոյն. ընկղմեցան վասն գինւոյ. դանդաչեցին յարբեցութենէ ցքւոյն. մոլորեցան, զի այն ինքն է յիմարութիւն: 8 *Ազովք կերիցեն զխորհուրդ՝ զի այն խորհուրդ յագահութենէ է: 9 *Ում պատմեսցուք զչարիս. ում դոյժ տացուք զանջատելոյն 'ի կաթանէ՝ զհատուցելոյն 'ի ստենէ: 10 *Նեղութիւն 'ի վերայ նեղութեանց. ընկալ, ընկալ կասկածանս 'ի վերայ կասկածանաց: փոքր միւս ևս՝ փոքր միւս ևս՝ վասն անզգամութեանց շրթանց: 11 *‖Յօտար լեզուս խօսեսցին ընդ ժողովրդեանդ ընդ այդմիկ: 12 *Եւ ասիցեն ցդոսա. եթէ այս է հանգիստ քաղցելոյն. և այն բեկումն. և ոչ կամեցան լսել: 13 *Եւ եղիցի նոցա բանն Տեառն նեղութիւք 'ի վերայ նեղութեանց: ընկալ, ընկալ կասկածանս 'ի վերայ կասկածանաց: փոքր միւս ևս՝ փոքր միւս ևս. մինչև գնասցեն. և յետս ընդդէմ կործանեսցին՝ և խորտակեսցին՝ և չարչարեսցին, և սատակեսցին: 14 *Վասն այսորիկ լուարուք զբանն Տեառն արք նեղեալք. և իշխանք ժողովրդեանդ այդորիկ յերուսաղէմ: 15 *Զի ասացէք՝ եթէ եդաք ուխտ ընդ դժոխս: և ընդ մահու դաշինս կռեցաք. մրրիկ փոթորկեալ թէ յարիցէ՝ ոչ եկեսցէ 'ի վերայ մեր. զի եդաք սուտ զյոյսն մեր. և ստութեամբ ծածկեցաք: 16 *Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր Տէր: ‖Ահաւասիկ ես դնեմ 'ի հիմունս սիոնի զվէմ. բազմապատիկ ընտիր գլուխ անկեան պատուական 'ի հիմունս նորա: և որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ: 17 *Եւ եդից զիրաւունս 'ի յոյս. և զողորմութիւն իմ 'ի կշիռս. և դուք յուսացեալ իցէք զուր 'ի ստութիւն. եթէ ոչ հասցի առ մեզ մրրիկն: 18 *Եւ ոչ բարձցէ զուխտն մեր՝ որ ընդ մահուն է: և զյոյսն ձեր՝ որ 'ի դժոխսն է, մի հաստատեսցի: զի մրրիկ փոթորկեալ եթէ գայցէ 'ի վերայ, եղիջիք նմա 'ի կոխումն: 19 *Զի յորժամ անցանիցէ՝ առցէ զձեզ. յառաւօտէ յառաւօտ անցցէ: 'ի տուէ և 'ի գիշերի եղիցի կասկած չարեաց: ուսարուք լսել նեղեալքդ: 20 *Մարտնչիլ ևս ոչ կարեմք. քանզի տկարացաք 'ի ժողովելն մերում: 21 *‖Իբրև զլեառն ամպարշտաց: ‖յարիցէ Տէր 'ի ձորն գաբաւոնացւոց լի բարկութեամբ. գործեսցէ զգործ իւր գործ դառնութեան: զի սրտմտութիւն նորա օտարաբար դատեսցէ. և դառնութիւն նորա օտարաբար հասցէ: 22 *Եւ դուք մի ցնծայք՝ և մի զօրասցին կապանք ձեր: զի իրս հաստատեալս և համառօտեալս լուայ 'ի Տեառնէ զօրութեանց. զոր առնելոց է 'ի վերայ ամենայն երկրի: 23 *Ունկն դիք՝ և լուարուք բարբառոյ իմոյ: անսացէք՝ և լուարուք բանից իմոց: 24 *Միթէ զօրն ամենայն հերկիցէ՝ որ հերկէն. կամ թէ սերմն յառաջագոյն ցանիցի մինչչև երկիրն գործեալ իցէ: 25 *Ոչ ապաքէն կակղէ զերեսս նորա՝ ապա սերմանեսցէ փոքր մի արջնդեղ և չաման. և ապա սերմանեսցէ ցորեան և գարի՝ կորեակ և հաճար 26 'ի սահմանս իւր: *Եւ խրատեսցիս դու իրաւամբք Աստուծոյ քոյ՝ և ուրախ եղիցիս: 27 *Զի ոչ եթէ խստիւ ինչ սրբեն

արջն

‖ 1. Կորն. 14.21.

‖ Սաղմ. 117.22. Մատթ. 21.42. Գործ. 4. 11. Հռովմ. 9.33. 1. Պետ. 2. 6.

‖ 2 Թագ. 5.20. 1. Մնաց. 14. 11. ‖ Յեսու. 10.10.

արջնդեղ ։ և ոչ ղանիւ կամխասայլին ածեն ՚ի վ(ե)րա չամանոյն. այլ գաւազանաւ թօթափի արջնդեղն ։ 28 * Եւ չամանն հացիւ ուտի. զի ոչ եթէ յաւիտեան բարկանայցեմ ձեզ. և ոչ ձայն դառնութեան իմոյ կոխիցէ զձեզ ։ 29 * Եւ այս նշանք ելին ՚ի սաբաւովթ Տեառնէ։ արդ խորհեցարուք՝ բարձէք ՚ի ձէնջ զընդունայն մխիթարութիւն ։

## Գլ. ԻԹ.

1 Վայ քեզ արիէլ՝ քաղաք արիէլ՝ զոր դաւիթն պաշարեաց ։ ժողովեցէք արմտիս՝ և կերայք ամ յամէ. և կերիջիք մովաբաւ հանդերձ ։ 2 * Զի նեղեցից զարիէլ. և եղիցի զօրութիւն և մեծութիւն նորա ինձ ։ 3 * Եւ պաշարեցից զքեզ՝ որպէս և դաւիթն. և ածից զքև պատնէշ ։ և կանգնեցից շուրջ զքև աշտարակս ։ 4 * Եւ խոնարհեսցին յերկիր բանք քո. և պատգամք քո ընդ գետին մտցեն. և եղիցին իբրև դետ նահձայնաց բարբառ քո ։ և յատակատակս բարբառն քո տկարասցի ։ 5 * Եւ եղիցի իբրև զփոշի անուոյ մեծութիւն ամպարշտաց ։ և իբրև զունդ մաղեալ բազմութիւն զրկողաց քոց ։ 6 * Եւ եղիցի որչափ յական թօթափել ՚ի սաբաւօթ Տեառնէ՝ այցելութիւն շարժմամբ՝ որոտմամբ՝ և մեծաձայն բարբառով. մրրիկ փոթորկեալ՝ և բոց հրոյ՝ որ ուտիցէ ։ 7 * Եւ եղիցի՝ որպէս զի տեսանիցէ ոք զերազ ՚ի տեսլեան գիշերոյ՝ մեծութիւն հեթանոսաց յարձակելոցն ՚ի վ(երայ) Երուսաղեմի. և ամ(ենայն) ժողովելոցն ՚ի վ(երայ) նորա. և որք նեղիցեն զնա ։ 8 * Եւ եղիցին՝ որպէս որք յերազի քաղցեալք իցեն՝ և ուտիցեն. և իբրև յառնիցեն՝ զուր է տեսիլն։ և զոր օրինակ ծարաւի ոք իցէ՝ յերազի ըմպիցէ. և յառնիցէ, և դարձեալ ծարաւիցի. ՚ի զուր յուսացաւ անձն նորա. այնպէս եղիցի մեծութիւն ամ(ենայն) հեթանոսաց. որք զօրաժողովեղեն ՚ի վերայ Երուսաղեմի և ՚ի վ(երայ) լերինն սիոնի ։ 9 * Զարմացարուք՝ յիմարեցարուք. թմբրեցարուք. և առաւել թմբրեցարուք. արբեցարուք, ոչ ՚ի գինւոյ՝ և ոչ ՚ի ցքւոյ։ 10 * Զի արբոյց ձեզ Տէր հոգի յիմարութեան. և խցցէ զաչս ձեր՝ և զմարգարէից ձերոց. և զիշխանաց ձերոց. և զծածկատեսացն ձերոց ։ 11 * Եւ եղիցին ձեզ պատգամքս այս ամ(ենայն) իբրև զբանս թղթոյ կնքելոյ. զոր իբրև տայցեն ցայր մի գրագէտ՝ և ասիցեն. ընթերցիր զայդ. և ասիցէ՝ ոչ կարեմ ընթեռնուլ՝ զի կնքեալ է ։ 12 * Եւ տացի նոյն գիր ՚ի ձեռն առն՝ որ ոչ գիտիցէ գիրս. և ասիցեն ցնա՝ ընթերցիր զայդ. և 13 ասիցէ՝ ոչ գիտեմ զդպրութիւն ։ * Եւ ասէ ցիս Տէր՝ մերձ է առ իս ժողովուրդս այս բերանով իւրով. և շրթամբք իւրեանց պատուեն զիս. և սիրտք իւրեանց հեռացեալք մեկուսի են յինէն. զուր պաշտեն զիս՝ ուսուցանեն զպատուէրս մարդկան՝ և զվարդապետութիւնս ։ 14 * Վա այսորիկ ահաւասիկ ես յաւելից փոփոխել զժողովուրդդ զայդ. և փոխեցից զդոսա։ և կորուսից զիմաստութիւն իմաստնոց ։ և զխորհուրդս խորհրդականաց արհամարհեցից ։ 15 * Վայ այնոցիկ որք խորհին խորհուրդս խորինս՝ և ոչ Տեառն. վայ այնոցիկ՝ որք խորհին զխորհուրդս ծածուկս. և եղիցին ընդ խաւար գործք նոցա. և ասիցեն թէ՝ ո տեսանէ զմեզ. և ո գիտիցէ՝ զինչ գործեմք ։ 16 * Ոչ ապաքէն իբրև զկաւ բրտի համարեալ իցէք։ միթէ ասիցէ՞ ստեղծուածն ցստեղծիչն իւր՝ թէ ոչ դու զիս ստեղծեր. կամ արարածն ցարարիչն՝ թէ 17 ոչ իմաստութեամբ արարեր զիս ։ * Ոչ ևս յետ սակաւուց ժամանակի՝ և եղիցի լիբանան իբրև զլեառն քերմեղ ։ և 18 քերմեղ յանտառ համարեսցի ։ * Եւ լուիցեն յաւուր յայնմիկ խուլք զբանս գրոյն այնորիկ. և որք ՚ի խաւարին և ՚ի միգին իցեն. տեսցեն աչք կուրա-19 ցելոցն ։ * Եւ ցնծասցեն աղքատք յաղագս Տեառն ուրախութեամբ. և անյոյսքն ՚ի մարդկանէ լցցին ուրախութեամբ ։ 20 * Պակասեցաւ անօրէնն. և կորեաւ ամբարտաւանն. և սատակեցան անօ-21 րէնք ՚ի չարիս ։ * Եւ ոյք առնեն մեղանչել մարդկան բանիւք։ ամ(ենայն) յանդիմանչացն դնէին ՚ի դրունս զգայթագղութիւն. և խոտորէին անիրաւութեամբ 22 զիրաւունս ։ * Վա այսորիկ այսպէս ասէ Տէր ՚ի վ(երայ) տանն յակոբու. զոր ընտրեաց յաբրահամէ. ոչ այժմ ինչ ամաչեսցէ յակոբ. ոչ այժմ զերեսս այլա-23 դառնեսցէ իէլ ։ * Այլ յորժամ տեսցեն որդիք նոցա զգործս իմ. վա իմ սբ արասցեն զանուն իմ. և սբ արասցեն զսբն յակոբու ։ և երկիցեն յԱյ իէլի ։ 24 * Եւ ծանիցեն մոլորեալք հոգւով զիմաստութիւն. և տրտնջօղքն ուսցին զհնազանդութիւն. և լեզուք թոթովախօսք ուսցին խօսել զխաղաղութիւն ։

Մատ. 15. 8. Մարկ. 7. 6. 1. Կոր. 1. 19.

## Գլ. Լ.

1 Այսպէս ասէ Տէր. վայ ձեզ որդիք ապստամբք։ զի խորհեցայք խորհուրդս՝ և ոչ ինև. և դաշինս կռեցիք՝ և ոչ իմով հոգւով. յաւելուլ զմեղս 2 ՚ի վ(երայ) մեղաց ։ * Որք գնայք իջանել յերկիրն եգիպտացւոց. և զիս ոչ հարցա֊

ցանէիք՝ գտանել զօգնականութիւն 'ի
փարաւոնէ՝ և թիկունս առնել զեգիպ
տացիսն ։ * Եւ եղիցին ձեզ թիկունք 3
փարաւոնի յամօթ ։ և յուսացելոցդ յե
գիպտացիսն նախատինք ։ * Զի են 4
յերկրին տայանու իշխանք հրեշտակք
չարք ։ * Զուր ջանան առ ժողովուրդն· 5
որ ոչ լինիցի դոցա շահ յօգնականու
թիւն· ոչ յօգուտ· այլ յամօթ և 'ի նա
խատինս ։ * Տեսիլ չորքոտանեացն անապատի ։ 6
'ի նեղութեան և յանձկութեան· առիւծ և
կորիւն առիւծու ։ և 'ի նոցանէ են
իժք· և կորիւնք իժից թռչունք ։ որք
բարձեալ բերէին իշոց զգանձս իւր
եանց · և լցեալ ուղտուց զմեծութիւն
իւրեանց · առ ազգ մի՝ որ ոչ լիցի նոցա յօգնա
կանութիւն ։ այլ յամօթ և 'ի նախա
տինս ։ * Եգիպտացիքն՝ որք զուր և 7
տարապարտ օգնեցին ձեզ · պատմեա
նոցա՝ թէ զուր է այդ մխիթարութիւն
ձեր ։ * Արդ նստեալ և գրեա 'ի տախտա 8
կի և 'ի գիրս · զի եղիցի այդ յաւուրս
իւրում և 'ի ժամանակս յաւիտենից ։
* Զի ժողովուրդ անհաւան է · և որ 9
դիք սուտք · որք ոչ կամեցան լսել զօ
րէնս Տն ։ * Որք ասէին ցմարգարէսն՝ 10
թէ մի պատմէք մեզ · այլ խօսեցարո՛ւք
մեզ · և պատմեցէ՛ք մեզ այլ մոլորու
թիւն ։ * Եւ դարձուցէք զմեզ 'ի ճանա 11
պարհէդ յայդմանէ · և 'ի բաց արարէք
'ի մէնջ զշաւիղդ զայդ · և հանէք 'ի
մէնջ զօրէնս Տն Իղի ։ * Վն այսորիկ 12
այսպէս ասէ Տր Տր սբն Իղի · փոխա
նակ զի անարգեցիք դուք զբանսդ զայս
դոսիկ · և յուսացայք 'ի ստութիւն սնո
տի · և զի տրտնջեցիք՝ և յուսացայք 'ի
բանդ յայդ ։ * Վասն այնորիկ եղիցին 13
ձեզ մեղքդ այդոքիկ իբրև զպարիսպ
կործանեալ առժամայն ամուր քաղա
քի առեցելոյ · որում յանկարծակի հա
սանիցի կործանումն ։ * Եւ կործա 14
նումն նր եղիցի իբրև զբեկումն խեցե
ղէն անօթոյ բրտի մանր խորտակեցե
լոյ՝ զի մի ոք գտանիցէ 'ի նմանէ · որով
զհուր բառնայցէ · և կամ մարթիցի
առնուլ սակաւ մի ջուր ։ * Զի այսպ 15
ասէ Տր Տր սբն Իղի · յորժամ դարձ
ցիս և յոգւոց հանիցես՝ յայնժամ կեց
ցես · և գիտասցես՝ թէ ուր իցես ։
Զի յուսացեալ էիր դու 'ի սնոտիսն·
սնոտի եղև և զօրութիւն ձեր · և ոչ
կամէիք լսել ։ * Այլ ասէիք, երիվա 16
րօք մերովք փախիցուք · վն այսորիկ
փախստականք լինիցիք · և ասէիք, թէ
երագ երիվարօք մերովք փախիցուք ·
վն այսորիկ երագագոյնք քան զձեզ
եղիցին՝ որք հալածեսցեն զձեզ ։ * Զի 17
'ի միոջէ բարբառոյ հազարք փախի

ցեն · և 'ի բարբառոյ հնգից բազումք
փախիցեն · մինչև մնասջիք իբրև զծող
ցցեալ 'ի լերին · և իբրև զկոթող կանգ
18 նեալ 'ի վերայ բլրոյ ։ * Եւ դարձեալ
կանխեսցէ Ած գթալ 'ի ձեզ · և վասն
այնորիկ բարձրասցի ողորմել ձեզ · զի
դատաւոր Տր Ած մեր է · երանի ամե
19 նեցուն՝ ոյք սպասեն նմա ։ * Զի ժո
ղովուրդ սբ 'ի սիոն բնակեսցի · և Եէմ
լալով ելաց՝ թէ ողորմեա՛ց ինձ ։ ողոր
մեսցի քեզ · և լուիցէ ձայնի աղաղա
կի քում ։ իբրև ետես՝ լուաւ քեզ ։
20 * Եւ տացէ ձեզ Տր զհաց նեղութեան
և զջուր կարօտանաց · և ո՛չ ևս մերձես
ցին 'ի քեզ՝ որք մոլորեցուցանէին ն
զքեզ · զի աչք քո տեսցեն 'ի մոլորե
21 ցուցիչսն քո ։ * Եւ ականջք քո լուի
ցեն բանս զհետ մոլորեցուցչացն քոց ·
որք ասէին՝ թէ այս է ճանապարհ՝ և
գնասցուք ընդ սա · կամ թէ յաջ կամ
22 եթէ յահեակ ։ * Եւ գարշեցուսցես
զկուռսն զարծաթապատս՝ և զոսկեպա
տս · մանրեսցես զնս , և հոսեսցես
իբրև զջուր դաշտանեաց · և իբրև զաղբ
23 մերժեսցես զնս ։ * Յայնժամ եղիցի
անձրև սերմանեաց երկրի քում · և
հաց արդեանց երկրի քո եղիցի յա
գուրդ և 'ի պարարտ ։ և ճարակեսցին
խաշինք քո յաւուր յայնմիկ 'ի տեղւոջ
24 պարարտութեան և յանդորրու ։ * Զուա
րակք ձեր և եզինք՝ որք գործեն զեր
կիր՝ կերիցեն զյարդ խառնեալ ընդ
25 գարի հոսեալ 'ի կալոյ ։ * Եւ եղիցի 'ի
վր ամ լերանց բարձանց · և 'ի վր ամ
բլրոց բարձրաւանդակաց ջուր բղ
խեալ ։ յաւուր յայնմիկ յորժամ կորի
ցեն բազումք · և կործանեսցին աշտա
26 րակք ։ * Եւ եղիցի լոյսն լուսնի իբրև
զլոյս արեգական · և լոյս արեգական
եօթնպատիկ եղիցի՝ իբրև զլոյս աւ
ուրց եօթանց ։ Յաւուր յորում բժշ
կեսցէ Տէր զբեկումն ժողովրդեան
իւրոյ · և զցաւս վիրաց քոց բժշկեսցէ ։
27 * Ահաւասիկ անուն Տն գայ յամայր (յերկար ամանակս)
ամս · յետ բազում ժամանակաց վա
ռեալ բարկութբ՝ և լի փառօք · բանք
շրթանց նորա · և բանք բերանոյ նորա
լի բարկութբ · և բարկութիւն սրտմտու
28 թեն նր իբրև զհուր կերիցէ ։ * Եւ հո
գի նր իբրև զջուր ձորալիր պարանո
ցաթաղ յորդեսցի ։ և բաժանեսցի
խռովեցուցանել զազգս վն սնոտի մո
լորութեն · և հալածեսցէ զնս մոլորու
թիւն · և հասցի նց յանդիման նոցին ։
29 * Միթէ հանապազ պարտիցէ ձեզ
ուրախութբ մտանել 'ի սրբութիս իմ
յամ ժամ տօնիք և ուրախութբ և
փողովք մտանել 'ի լեառն Տն առ Ած

սբն

նըն իւր: *Եւ լսելի արասցէ զփառս 30 բարբառոյ իւրոյ. և զսրտմտութիւն բազկի իւրոյ ցուցցէ բարկութեամբ՝ և սրտմտութեամբ՝ և բոցով՝ որ ուտիցէ. և սաստիկ բարկութեամբ հրացանիւ. և ջրով և կարկտիւ միանգամայն հոսելով բռնութեամբ: *Զի 'ի բարբառոյ Տն ընկճեսցին 31 ասորեստանեայք. հարուածովք զոր հարկանիցէ զնոսա: *Եւ 32 եկեսցէ նմա շուրջ յօգնականաց իւրոց՝ յոր կողմն և յուսացեալ իցէ: զի նք փողովք՝ և թմբկաւ՝ և պէսպէս պատերազմաւ՝ փոփոխ մարտիցին ընդ նմա: և դու յառաջագոյն քան զաւուրսն պահանջեսցիս: *Իսկ արդ՝ և քեզ պատ 33 րաստեալ իցէ թագաւորել 'ի մէջ ձորոյն խորոյ: փայտ դիզեալ՝ հուր և փայտ կոյտ բազում վառեալ. սրտմտութիւն Տն իբրև զձոր լի ծծմբով բորբոքեալ:

## Գլ: ԼԱ:

1 Վայ որք իջանեն յեգիպտոս վասն օգնականութեան՝ որք 'ի հեծեալս և 'ի կառս յուսացեալ իցեն՝ թէ բազում են. և բազմութիւն երիվարացն յոյժ: և ոչ էին յուսացեալ 'ի սուրբն Իսրայէլի. զԱծ ոչ խնդրեցին: 2 *Եւ նա իմաստուն էր՝ և ածէր 'ի վերայ նոցա չարիս. և բանն նորա ոչ անարգեսցի. և յարիցէ 'ի վերայ տանց մարդոց չարաց. և վասն սնոտի յուսոյն նոցա: 3 *Յայր եգիպտացի, և ոչ յԱծ՝ 'ի մարմինս երիվարաց, և ոչ գոյ օգնականութիւն: այլ Տր արկցէ 'ի վերայ նոցա զձեռն իւր. և տաժանեսցին օգնականքն. և կործանեսցին օգնեալքն 'ի նոյանէ. և առ հասարակ ամենեքին սատակեսցին: 4 *Զի այսպէս ասաց ցիս Տր. թէ զոր օրինակ գոչեսցէ առիւծ՝ և կորիւն առիւծու յորս՝ յոր հասանիցի. կոչեսցէ 'ի վերայ՝ և լցցէ զլերինս բարբառով իւրով. և 'ի պարտութիւն մատնեսցին: և 'ի սաստկութենէ սրտմտութեան նորա հալեսցին: այնպէս իջցէ Տէր զօրութեանց 'ի լեառնն սիոն, և 'ի վերայ լերանց դորա: 5 *Իբրև զթռչունս թռուցեալս. այնպէս հովանի լիցի Տր զօրութեանց 'ի վերայ երէմի: 'ի թիկունս իջցէ՝ օգնեսցէ՝ և փրկեսցէ՝ և կեցուսցէ: 6 *Դարձարուք՝ որք խորհիք զխորհուրդս խորինս և զանօրէնս՝ որդիք Իէլի: 7 *Զի յաւուր յայնմիկ բարձցեն մարդիկ զձեռագործս իւրեանց զարծաթեղէնս և զոսկեղէնս՝ զորս արարին ձեռք նոցա 'ի մեղս: 8 *Եւ անկցի ասորեստանեայն ոչ սրով առն. և ոչ սուր մարդոյ կերիցէ զնա. և 'ի փախուստ դարձցի՝ ոչ յերեսաց սուսերի. և երիտասարդքն նր 'ի պարտութիւն մատ

(Margin: Եգիպտացին մարդ. և ոչ Աստ. և երիվարք նոցա մարմինք. և ոչ հոգի. — Տանչեսցէ)

9 նեսցին: *Եւ եղիցին վիմարգելք իբրև զորմարգելս: և 'ի պարտութիւն մատնեսցին: և որ փախիցեն, ըմբռնեսցին: այսպէս ասէ Տր: երանի որ ունիցի զաւակ 'ի սիոն՝ և ընտանեակք իցեն նր յէմ:

## Գլ: ԼԲ:

1 Զի ահաւասիկ թագաւոր արդար թագաւորեսցէ. և իշխանք 2 իրաւամբք տիրեսցեն: *Եւ եղիցի մարդ՝ որ թաքուցանիցէ զբանս իւր. թաքիցէ իբրև 'ի ջուրց սաստկութենէ. և երևեսցի 'ի սիոն իբրև գետ յորդեալ փառաւոր 'ի ծարաւուտ երկրի: 3 *Եւ ոչ ևս եղիցին յուսացեալ 'ի մարդիկ. այլ տայցեն զականջս 'ի լսել: 4 *Եւ սիրտք տկարաց անսասցեն 'ի լսել. և լեզուք թոթովք արագ արագ 5 ուսցին խօսել զխաղաղութիւն: *Եւ ոչ ևս ասասցեն ցյիմարն լինել նոցա իշխան. և ոչ ևս ասասցեն պաշտօնեայք 6 քո՝ թէ լուռ լեր: *Քանզի յիմարն զյիմարութիւն խօսեսցի. և սիրտ նորա զնանրութիւն խորհեսցի. կատարել զանօրէնութիւն. և խօսիլ առ Ած զմոլորութիւն. ցրուել զանձինս քաղցելոց՝ և զանձինս ծարաւելոց ունայնս ար 7 ձակել: *Զի խորհուրդք չարաց անօրէնս խորհին. ապականել զխոնարհս բանիւք անիրաւութեամբ. ցրուել զանձինս քաղցելոց՝ և զանձինս ծարաւելոց ունայնս արձակել. և ցրուել զբանս տնանկաց 'ի դատաստանի: 8 *Իսկ ուղիղք իմաստունս իմացան. և 9 խորհուրդն այն կայ՝ մնայ: *Կանայք մեծատունք. արիք՝ և լուարուք բարբառոյ իմոյ. և դստերք կասկածանօք 10 լուարուք զբանս իմ: *Յուշ լիցին ձեզ աւուրքն տարեկանաց ցաւօք և կասկածանօք. նուաղեցան կութք. դադարեցին սերմանք. և այլ ոչ ևս եկեսցեն: 11 *Զարհուրեցարուք բարեկեցիկք: տրտմեցարուք յանձնապաստանքդ. մերկացարուք՝ կողոպտեցարուք՝ քրձազգածք եղերուք: 12 *Կոծեցարուք 'ի վերայ ստեանց. վասն անդոյն ցանկալեաց՝ և վասն այգեացն բերոյ: 13 *Յերկրի ժողովրդեան իմոյ փուշ և խոտ բուսցի. և յամ ապարանից ուրախութիւն բարձցի՝ քաղաքիդ մեծացե 14 լոյ: *Ապարանք լքեալք՝ զմեծութիւն քաղաքիդ լքցեն՝ և զտունս ցանկալիս. և եղիցին աւանք քո այրք յաւիտենից: ուրախութիւն ցռուց՝ և ճարակք հօտից: 15 *Մինչև եկեսցէ 'ի վերայ ձեր հոգի 'ի բարձանց. և եղիցի անապատն 'ի քերմէլ, և քերմէլ յանտառ համարեսցի.

*Եւ

16 *Եւ հանգիցեն իրաւունք յանապատի. եւ արդարութիւն 'ի քերմէղ բնակեսցի : 17 *Եւ եղիցին գործք արդարութեան խաղաղութիւն. եւ կալցի արդարութիւն զհանգիստ. եւ յուսացեալք եղիցին մինչեւ յաւիտեան : 18 *Եւ բնակեսցի ժողովուրդ իմ 'ի քաղաքին խաղաղութեան. եւ բնակեսցի յուսով. եւ հանգիցեն մեծութեամբ : 19 *Իսկ կարկուտն եթէ իջանիցէ, ո՛չ 'ի ձեր վերայ եկեսցէ. եւ եղիցին, որք բնակեալք իցեն յանտառին՝ յանհոգս. իբրեւ զայնոսիկ որք կեցցեն 'ի դաշտի : 20 *Երանի որք սերմանիցեն ընդ ամենայն ջրով՝ ուր եզն եւ էշ կոխիցեն :

## ԳԼ: ԼԳ:

1 Վա՛յ այնոցիկ՝ որք թշուառացուցանիցեն զձեզ. բայց զձեզ ո՛չ ոք կարէ թշուառացուցանել. եւ որք արհամարհեն՝ ո՛չ զձեզ արհամարհեն : զի մատնեսցին 'ի պարտութիւն որք զձեզն արհամարհեն. եւ իբրեւ զցեց 'ի վերայ ձորձոյ՝ այնպէս մատնեսցին 'ի պարտութիւն : 2 *Տէր ողորմեա՛ց մեզ. զի 'ի քեզ յուսացաք. եղեւ զաւակ անհաւատից 'ի կորուստ : այլ մեր փրկութիւն 'ի քեզ է 'ի ժամանակի նեղութեան : 3 *Վասն բարբառոյ ահի քոյ յիմարեցան ժողովուրդք. եւ յերկիւղէ քումմէ ցրուեցան հեթանոսք : 4 *Եւ արդ ժողովեսցի կապուտն ձեր մեծի եւ փոքու. որպէս ոք զի ժողովիցէ զմարախ իբրեւ 'ի գբոյ. այնպէս այպն առնիցեն զձեզ : 5 *Սուրբ է Տէր Աստուած մեր՝ որ բնակեալն է 'ի բարձունս. լցաւ սիոն իրաւամբք եւ արդարութեամբ : 6 *Օրինօք մատնեսցին. գանձիւք եղիցի փրկութիւն մեր : էհաս իմաստութիւն եւ հանճար՝ եւ Աստուածպաշտութիւն Տեառն. այսոքիկ են գանձք արդարութեան : 7 *Արդ հաւադիկ յահէ ձերմէ նոքա երկիցեն՝ յորոց երկնչէիքն. երկիցեն 'ի ձէնջ : հրեշտակք արձակեսցին. որք լայցեն դառնապէս՝ եւ խնդրիցեն զխաղաղութիւն : 8 *Զի հատան ճանապարհք նորա. հանդարտեաց ահն հեթանոսաց. եւ բարձաւ ուխտն որ ընդ նոսա. եւ մի՛եւս համարիցիք զնոսա 'ի մարդիկ : 9 *Սուգ էառ՝ եւ տկարացաւ երկիր. յամօթ եղեւ լիբանան. 'ի դաշտ մարգագետին համարեցաւ սարոն : յայտնի եղեւ գալիլեա եւ կարմեղոս : 10 *Արդ յարեայց՝ ասէ Տէր. արդ փառաւորեցայց. արդ բարձրացայց : 11 *Արդ տեսջիք. արդ յամօթ լիջիք. ընդունայն լիցի զօրութիւն ոգւոց ձերոց՝ եւ հուր կերիցէ զձեզ : 12 *Եւ եղիցին հեթանոսք խարշեալք իբրեւ զփուշ յագարակի՝ այրեցեալք եւ



13 ընկեցեալք : *Լուիցեն հեռաւորք զոր արարի. ծանիցեն մերձաւորք զզօրութիւն իմ : 14 *Մերժեցան 'ի սիոնէ անօրէնք. դողումն կալցի զամպարիշտս : իսկ արդ՝ ո՞ պատմեսցէ ձեզ թէ հուր բորբոքեալ. կամ ո՞ պատմեսցէ ձեզ զտեղւոյն յաւիտենից : 15 *Որ գնայ արդարութեամբ. խօսի զուղիղ ճանապարհ. ատեայ զանօրէնութիւն եւ զանիրաւութիւն. թօթափէ զձեռս իւր 'ի կաշառոյ. ծանրացուցանէ զականջս իւր՝ առ 'ի չլսելոյ զդատաստան արեան. խնու զաչս իւր. զի մի՛ տեսցէ զանիրաւութիւն : 16 *Նա բնակեսցի 'ի բարձրային յայրին հաստատնոյ : հաց տացի նմա՛ եւ ջուր նորա հաւատարիմ : 17 *Զթագաւորն փառաց տեսցեն աչք նորա. տեսցեն զերկիրն 'ի հեռուստ : 18 *Եւ անձինք ձեր խոկասցեն յերկիւղ Տեառն : ո՛ւր են դպիրքն. ո՛ւր են խրատտուքն. ո՛ւր է՝ որ ունի զհամար պահակերաց զմեծի եւ զփոքու : 19 *Ժողովրդեանն ընդ որում ոչինչ խորհեցաւ. զի չէր տեղեակ ծանրաձայնին վասն չլսելոյ. ժողովուրդ յուսացեալ. եւ ոչ գոյ լսողին 'ի միտ առնուլ : 20 *Ահաւասիկ սիօն քաղաք փրկութեան մերոյ. աչք ձեր տեսցեն զերուսաղէմ քաղաք մեծացեալ. խորանք, որք ոչ շարժեսցին. եւ մի՛ շարժեսցին ցիցք խորանի նորա յաւիտեանս ժամանակաց. եւ մի՛ խզեսցին ապաւանդակք նորա : 21 *Զի անուն Տեառն մեծ է 'ի ձեզ. ձեզ լիցի տեղին յորում գետքն եւ ջրադարձքն լայն եւ ընդարձակ՝ ոչ եր թիցես ընդ այն ճանապարհ. եւ մի՛ գնասցեն նաւք քո վարեալք. զի Աստուած իմ մեծ է. եւ ո՛չ արասցէ զանց զինեւ : 22 *Տէր հայր մեր. Տէր դատաւոր մեր. Տէր իշխան մեր. Տէր թագաւոր մեր. Տէր փրկիչ մեր՝ եւ նա փրկեսցէ զմեզ : 23 *Խզեցան պարանք քո. զի ոչ հանդարտեցին. նոյնպէս եւ կայմն խոնարհեցաւ՝ եւ ոչ պարզեսցէ զառագաստն. եւ ոչ արձակեսցէ զնշանն. մինչեւ մատնեսցի 'ի կորուստ : այսուհետեւ բազում կաղք զաւար առնուցուն : 24 *Եւ մի՛ ասասցեն թէ վաստակեցաք՝ ժողովուրդն որ բնակեալ իցէ 'ի նոսա. զի թողան մեղքն նոցա :

## ԳԼ: ԼԴ:

1 Մատերու՛ք հեթանոսք. եւ լուա՛րու՛ք. ո՛ւնկն դիք իշխանք. լուիցէ երկիր՝ եւ որք 'ի նմա իցեն տիեզերք. եւ 2 ժողովուրդք որք 'ի նմա : *Զի սրտմտութիւն Տեառն 'ի վերայ ամենայն ազգաց. եւ բարկութիւն 'ի վերայ ամենայն թուոց նոցա. սատակել զնոսա՝ եւ մատնել զնոսա 'ի սպանումն : 3 *Եւ վիրաւորք նոցա դիտապաստ անկ_



Սաղմ. 14.2.

Եւր Ջում

1. Կորն. 1. 20.

ցին՝ և ելցէ հոտ նց̃. և թացցին լերինք յարենէ նոցա ։ 4 * Եւ հալեսցին ամ̃ զօրութիւնք երկնից. և գալարեսցին երկինք իբրև զմագաղաթ. և ամ̃ աստեղք թօթափեսցին իբրև զտերև յորթոյ. և որպէս անկանի տերև 'ի թզենւոյ։ 5 * Զի արբեցաւ սուր իմ յերկինս. արդ 'ի վերայ եդոմայեցւոց իջցէ. և 'ի վր̃ կորստական ժողովրդեանն դատանօք ։ 6 * Սուր Տն̃ լցաւ արեամբ. ուռուցաւ ճարպով գառանց. և ճարպով ցլուց և խոյոյ. զի զոհ Տն̃ է 'ի բոսոր. և սպանդ մեծ յերկրին եդոմայեցւոց ։ 7 * Եւ ընկճեսցին մեծամեծք ընդ նոսա՝ և խոյք և ցուլք. և արբցի երկիրն յարենէ նոցա ։ և հող նոյա 'ի ճարպոյ նոցա լցցի ։ 8 * Զի օր դատաստանի Տն̃ է. և տարեկան հատուցման դատաստանի սիոնի ։ 9 * Եւ դարձցին ձորք նր̃ 'ի ձիւթ. և երկիր նր̃ 'ի ծըծումբ. և եղիցի երկիր նորա իբրև զձիւթ վառեալ ։ 10 * Ի տուէ և 'ի գիշերի մի շիջցի՝ յաւիտեանս ժամանակաց. և բարձրասցի ծուխ նորա 'ի վեր. և աւերեսցի յազգս յազգաց նոցա. և 'ի բազում ժամանակս աւերեսցի. և ոչոք իցէ՝ որ անցանիցէ ընդ նա ։
11 * Եւ բնակեսցին 'ի նմա թռչունք. և ոզնիք և ցինք և ագռաւք. և անկցի 'ի նմա լարաբաժին աւերակի. և յուշկապարիկք բնակեսցին 'ի նմա ։ 12 * Եւ եղիցին իշխանք նր̃ իբրև զչեղեալք. և թագաւորք նր̃ և մեծամեծք եղիցին 'ի կորուստ ։ 13 * Եւ բուսցի 'ի քաղաքս նց̃, և յամուրս փայտ փշաբեր. և եղիցի բնակութի համբարուաց և հանգիստ ջայլեմանց ։ 14 * Եւ պատահեսցին դևք յուշկապարկաց. և տայցեն ձայն միմեանց. անդ հանգիցեն յուշկապարիկք. զի գտին իւրեանց զհանգիստ ։ 15 * Անդ էհան ձագս ոզնի. և սնոյց երկիր զձագս նորա զգուշութբ̃. անդ պատահեցան միմեանց եղջերուք. և տեսին զերեսս իւրերաց ։ 16 * Թուով անցին՝ և մի 'ի նոցանէ ոչ վրիպեցաւ. ընկեր զընկեր ոչ խնդրեցին. զի Տր̃ հրամայեաց նց̃. և հոգի նորա ժողովեաց զնոսա ։ 17 * Եւ նոյն վիճակեսցուսցէ զնոսա. և ձեռն նորա բաժանեաց նոցա ճարակս յաւիտեանս ժամանակաց ։ ժառանգեսցեն յազգաց յազգս. և հանգիցեն 'ի նմա ։

## Գլ: ԼԵ.

1 Ուրախ լեր անապատ ծարաւի. ցնծասցէ անապատ. և ծաղկեսցի իբրև զշուշան ։ 2 * Ծաղկեսցի՝ և ցնծասցէ անապատն յորդանանու. և փառքն լիբանանու տացի նմ̃. և պատիւն կարմեղայ. և ժողովուրդ իմ տեսցէ զփառս Տն̃. և զբարձրութի Ա̃յ մերոյ ։ 3 * Զօրացարուք ձեռք լքեալք՝ և ծունկք կթուցեալք ։ 4 * Մխիթարեցարուք կարճամիտք սրտիւք. զօրացարուք՝ և մի երկնչիք. ահաւասիկ Ա̃ծ մեր հատուցանէ զդատաստան՝ և հատուսցէ՝ ինքնին եկեսցէ՝ և փրկեսցէ զմեզ ։ 5 * Յայնժամ աչք կուրաց բացցին՝ և ականջք խլից լուիցեն ։ 6 * Յայնժամ վազեսցէ կաղն իբրև զեղջերու. և պարզ լիցի լեզու ծանրախօսաց. զի ջուր բղխեցաւ յանապատի՝ և գետ 'ի ծարաւուտ երկրի ։ 7 * Եւ եղիցի անջուրն յաղտեւր. և աղբիւր ջուրց 'ի ծարաւուտ երկրի. անդ եղիցի ուրախութի հաւուց. և մակաղատեղք խաշանց. անդ մարգագետինք և խաղք ։ 8 * Անդ եղիցի ճանապարհ մաքրեալ. և ճանապարհ սբ̃ կոչեսցի. և մի անցցէ ընդ նա պիղծ. և մի եղիցի անդ ճանապարհ պղծոց. այլ ցրուեալքն գնասցեն ընդ նա՝ և մի մոլորեսցին ։ 9 * Մի եղիցի անդ առիւծ. և մի 'ի գազանաց չարաց ընդ այն անցանիցէ. և մի ամենևին գտցի 'ի նմա. այլ ընդ նա գնասցեն փրկեալքն և ժողովեալքն վս̃ Տն̃ ։ 10 * Եւ դարձցին՝ և եկեսցեն 'ի սիոն ցնծութբ̃. և ուրախութի յաւիտենից 'ի վր̃ գլխոց նց̃. զի 'ի վր̃ գլխոց նց̃ ցնծութի՝ օրհնութի, և ուրախութի հասցի նց̃. մերժեցան ցաւք՝ և տրտմութիք և հեծութիք ։

## Գլ: ԼԶ.

1 ԵՒ ԵՂԵՒ 'ի չորեքտասաներորդի ամի թագաւորութեանն եզեկիայ. եւ սենաքերիմ արքայ ասորեստանեայց 'ի վերայ ամուր քաղաքացն հրէաստանի, և էառ զնոսա ։ 2 * Եւ առաքեաց արքայն ասորեստանեայց զռափսակ 'ի լաքիսայէ յերուսաղէմ առ արքայ եզեկիայ զօրօք բազմօք. և եկն՝ եկաց 'ի վր̃ ջրմղի 'ի վերնոյ աւազանին 'ի ճանապարհի ագարակին թափչաց ։ 3 * Եւ ելին առ նա եղիակիմ քեղկեայ. որ հազարապետն էր. և սոմնաս հրովարտակաց դպիր. և յովաք ասափայ յիշատակաց դպիր ։ 4 * Եւ ասէ ցնոսա ռափսակ. երթայք՝ ասասջիք ցեզեկիայ. այսպէս ասէ մեծ արքայն ասորեստանեայց՝ յո՞ յուսացեալ իցես ։ 5 * Մի թէ խորհրդով՝ կամ բանիւք շրթանց պատերազմ վճարիցի. իսկ արդ յո՞ յուսացեալ ես. զի ոչ հնազանդիս ինձ ։ 6 * Ահաւադիկ յուսացեալ ես 'ի ցուպն եղեգնեայ՝ 'ի ջաղջախ եգիպտացին. յոր թէ յենուցու ոք՝ խորտակի՝ և ընդ ձեռս ելանէ. այնպէս և փարաւոն արքայն

Դ թագ. 18.13. 2 Մն. 32.1.

քայն եգիպտացւոց. և ամենեքին որք յուսացեալ են 'ի նա: * Իսկ եթէ ասիցէք. եթէ 'ի Տր Ած մեր յուսացեալ եմք. ո՞չ ապաքէն նա է. վասն որոյ քակեաց եզեկիա զբարձունս և զսեղանս նոցա. և պատուէր ետ հրէաստանի և երուսաղէմի՝ առաջի նր սեղանոյն միայն երկիր պագանել: 8 * Արդ արդ եկա՛յք՝ խառնեցարուք ընդ տեառն իմում արքային ասորեստանեայց. և տաց ձեզ երկուս հազարս երիվարաց՝ եթէ կարիցէք տալ հեծեալս 'ի վերայ նց: 9 * Եւ զիա՞րդ կարիցէք 'ի դիմի հարկանել միում ումեք յաշխարհակալաց ծառայից տեառն իմոյ. որք յուսացեալ քդ էք յեգիպտոս 'ի հեծեալս և յերիվարս նց: 10 * Իսկ արդ՝ մեք առանց Տն եկեալ իցեմք յերկիրս յայս, տալ պատերազմ ընդ սմա. Տր ասաց ցիս. ել յերկիրն յայն. և ապականեա՛ զնա: 11 * Եւ ասէ ցնա եղիակիմ. և սոմնաս՝ և յովաք. խօսեա՛ց ընդ ծառայս քո ասորերէն՝ զի լսեմք. և մի՛ խօսիր ընդ մեզ հրէերէն. և ընդէ՞ր խօսիցիս յականջս մարդկան. որք անկեալ կան զպարսպաւս: 12 * Ասէ ցնս ռափսակ. մի թէ առ տէրն ձեր՝ կամ առ ձեզ առաքեաց զիս տէր իմ խօսել զբանս զայսոսիկ. ո՞չ ապաքէն առ մարդիկդ. որք նստին 'ի վր պարսպիդ. զի մի՛ ուտիցեն զաղբ. և ըմպիցեն զմէզ իւրեանց ձեօք հանդերձ: 13 * Յոտն եկաց ռափսակ՝ և աղաղակեաց 'ի ձայն մեծ հրէարէն՝ և ասէ. լուա՛րուք զպատգամս թագաւորին՝ մեծի արքային ասորեստանեայց: 14 * Այսպէս ասէ արքայ. մի՛ պատրեսցէ զձեզ եզեկիա բանիւք՝ որովք ոչ կարէ փրկել զձեզ: 15 * Եւ մի՛ խաբեսցէ զձեզ եզեկիա. եթէ Ած փրկեսցէ զձեզ. և ոչ մատնեսցի քաղաքդ 'ի ձեռս թագաւորին ասորեստանեայց: 16 * Մի՛ անսայք եզեկիայ. այսպէս ասէ արքայն ասորեստանեայց. եթէ կամիք դիւրել անձանց, եկա՛յք, ելէ՛ք առ իս. և կերիջիք իւրաքանչիւր զայգի իւր՝ և զթզենի. և արբջիք զջուր 'ի ջրհորոց ձերոց: 17 * Մինչև եկից, և տարայց զձեզ յերկիրն՝ որ իբրև զերկիրս ձեր է. երկիր ցորենոյ և գինւոյ. հացաւէտ և այգաւէտ: 18 * Մի՛ խաբեսցէ զձեզ եզեկիա՝ և ասասցէ՝ թէ Ած փրկէ զձեզ. մի թէ փրկեցի՞ն աստուածք ազգացն զիւրաքանչիւր երկիր 'ի ձեռաց թագաւորին ասորեստանեայց: 19 * Ո՞ւր է աստուած եմաթայ՝ և արփաթայ. և ո՞ւր է աստուած քաղաքին սեփարուիմ. միթէ կարացի՞ն փրկել զշամրին 'ի ձեռաց իմոց: 20 * Ո՞յ աստուծոց ամենայն ազգացն այնոցիկ կարաց փրկել զերկիր իւր 'ի ձեռաց իմոց. զի և ձեր Ածդ փրկեսցէ զերսմ 'ի ձեռաց իմոց:

21 * Լռեա՛ն եղեն՝ և զոչինչ ետուն պատասխանի. վասն հրամանի թագաւորին չտալ պատասխանի. 22 * Եւ եմուտ եղիակիմ քեղկեայ՝ որ հազարապետն էր. և սոմնաս՝ հրովարտակաց դպիր. և յովաք ասափայ՝ յիշատակաց դպիր առ եզեկիայ, զօձիս պատառեալ. և պատմեցին նմա զբանսն ռափսակայ:

## Գլ: ԼԷ:

1 Եւ եղև՝ իբրև լուաւ արքայ եզեկիա. պատառեաց զպատմուճան իւր՝ և քուրձ զգեցաւ՝ և ել 'ի տուն Տն: 2 * Եւ առաքեաց զեղիակիմ զհազարապետն. և զսոմնաս հրովարտակաց դպիր. և զծերս 'ի քահանայիցն քրձազգածս առ եսայի մարգարէ որդի ամովսայ: 3 * Եւ ասեն ցնա. այսպէս ասէ եզեկիա՝ այսօր է օր նեղութն՝ և նախատանաց՝ և կշտամբութն՝ և բարկութն. յորում աւուր հասեալ են երկունք ծննդականի՝ և ո՛չ կարէ ծնանել: 4 * Լուիցէ Տր Ած քո զբանս ռափսակայ՝ զոր առաքեաց արքայն ասորեստանեայց տէր իւր նախատել զԱծ կենդանի. և նախատել բանիւք զորս լուաւ Տր Ած քո. և արդ խնդրեսցես 'ի Տն Այ քումմէ վս մնացելոցս այսոցիկ: 5 * Եւ եկին ծառայքն եզեկիայ արքայի առ եսայի: 6 * Եւ ասէ ցնս եսայի՝ զայս ասասջիք ցՏրն ձեր. այսպէս ասէ Տր. մի՛ երկիցես 'ի բանիցն՝ զորս լուար. որովք նախատեցին զիս հրեշտակք արքային ասորեստանեայց: 7 * Ահաւասիկ արկանեմ ես 'ի նա ոգի խռովութն. և լուեալ համբաւ դարձցի յաշխարհ իւր. և անկցի 'ի սուր յերկրի իւրում: 8 * Եւ դարձեալ անդրէն ռափսակայ՝ եհաս արքային ասորեստանեայց. զի պաշարեալ էր զլոբնայ. և լուաւ թէ արքայն ասորեստանեայց չուեաց 'ի ղաքիսայ: 9 * Եւ լուաւ զթարակայ թագաւորէ եթէ օպացւոց ասացեալ. ել թարակ արքայ եթէօպացւոց պաշարել զնա. դարձաւ անդրէն. և առաքեաց հրեշտակս առ եզեկիայ՝ և ասէ: 10 * Այսպէս ասասջիք ցեզեկիայ արքայ հրէաստանի. մի՛ խաբեսցէ զքեզ Ած՝ յոր դու յուսացեալ ես. և ասիցէ՝ եթէ ոչ մատնեսցի երսմ 'ի ձեռս արքային ասորեստանեայց: 11 * Արդ՝ ահա չիցէ՞ լուեալ քո՝ զորինչ արարին թագաւորք ասորեստանեայց ընդ ամ երկիր. որպս սատակեցին զնս. 12 իսկ արդ դու ապրելո՞ց իցես: * Մի թէ

Դ Թագ 19.1.

ապրեցուցին զնոսա աստուածք ազ֊
գացն՝ զորս կորուսին հարքն իմ,
զԳոզամ, և զԽառան, և զՀռափեթ,
և որք են յերկրին Եմաթայ։ *Ո՞ւր են 13
թագաւորք Եմաթայ. և Արփաթայ՝
և ո՞ւր են թագաւորք քաղաքին Սե֊
փարուիմ՝ և Անայ՝ և Աւայ։ *Եւ էառ 14
Եզեկիա զհրովարտակն 'ի ձեռաց հրեշ
տակացն. ընթերցաւ՝ և եմուտ 'ի
տունն Տ՟ն. և տարածեաց առաջի Տ՟ն։
*Եւ եկաց յաղօթս Եզեկիա առ Տ՟ր՝ և 15
ասէ։ *Տ՟ր սաբաւովթ. Ա՟ծ Ի՟ղի՝ որ նս 16
տիս 'ի քերովբէս՝ դու ես միայն՝ ամենայն
թագաւորութեանց տիեզերաց. դու
արարեր զերկին և զերկիր։ *Խոնարհ 17
հեղո՛ Տ՟ր զունկն քո՝ և լո՛ւր. բա՛ց Տ՟ր
զաչս քո. նայեա՛ց Տ՟ր. լո՛ւր Տ՟ր. և տես
զպատգամս՝ զոր առաքեաց Սենաքե֊
րիմ արքայն Ասորեստանեայց, նախա
տել զԱ՟ծ կենդանի։ *Եւ արդարև՝ 18
աւերեցին թագաւորք Ասորեստանի
զաշխարհս ամենայն, և զերկիր նոցա։
*Եւ հրձիգ արարին զկուռս նոցա. 19
քանզի ո՛չ էին աստուածք. այլ ձե֊
ռագործք մարդկան փայտեղէնք՝ և
քարեղէնք. և կորուսին զնոսա։
*Բայց արդ՝ Տ՟ր Ա՟ծ մեր՝ ապրեցո՛ ըզ 20
մեզ 'ի ձեռաց նորա. զի ծանիցեն ա՟մ
թագաւորութիւնք երկրի՝ թէ դու միայն
ես Ա՟ծ։ *Եւ առաքեաց Եսայի որդի 21
Ամոսայ առ Եզեկիայ՝ և ասէ ցնա. այս
պէս ասէ Տ՟ր Ա՟ծ Ի՟ղի. լուա՛յ աղօթիցն՝
զոր աղաչեցեր առ իս՝ վ՟ն Սենաքերիմայ
արքային Ասորեստանեայց։ *Արդ այս 22
բանն է՝ զոր խօսեցաւ վասն ն՟ր Ա՟ծ. ան
գոսնեաց՝ արհամարհեաց զքեզ կոյս
դուստր Սիոնի. գլուխ շարժեաց 'ի վ՟ր
քո դուստր Եր՟մի։ *Զո՞ նախատեցեր 23
և գրգռեցեր. և առ ո՞ բարձրացու֊
ցեր զբարբառ քո. և ամբարձեր զաչս
քո 'ի բարձունս 'ի սուրբն Ի՟ղի։ *Զի 'ի 24
ձեռն հրեշտակաց նախատեցեր զՏ՟ր.
դու ասէիր՝ թէ բազմութ՟բ կառաց
իմոց ելի 'ի բարձրութ՟ն լերանց. և 'ի
ծագս Լիբանանու. և կոտորեցի զբարձ
րութ՟ն մայրեց նորա. և զգեղեցկու
թ՟ն նոճից նորա. և մտի 'ի բարձրու֊
թ՟ն կողմանց անտառին։ *Եւ արկի 25
զկամուրջ. և աւերեցի զջուրսն. և
զա՟մ ժողովս ջրոցն։ *Չիցէ լուեալ 26
քո՝ զոր յառաջագոյն արարի ես. յաւ
ուրցն առաջնոց զոր կարգեցի. և այժմ
յայտնեցի աւերել զհեթանոսս յա֊
մուրս իւրեանց։ *Եւ զբնակիչս քա֊ 27
ղաքաց յիւրաքանչիւր ամրոցաց. թո֊
ղի 'ի ձեռաց՝ և ցամաքեցան. և եղեն
իբրև զխոտ ցամաքեալ 'ի վերայ տա֊
նեաց՝ և իբրև զսեզ չորացեալ։

28 *Արդ զկայս հանգստեան քոյ. և զել՝
և զմուտ ճանապարհաց քոց ես ինձէն
29 գիտեմ։ *Եւ սրտմտութիդ քո՝ զոր
սրտմտեցեր՝ և դառնութ՟ի քո ել առա
ջի իմ։ և արկից վարապանակ 'ի ցռուկս
քո. և դանդանաւանդ 'ի կզակս քո. և
դարձուցից զքեզ ընդ նոյն ճանապարհ՝
30 ընդ որ եկիր։ *Այլ քեզ այս եղիցի
նշան։ կերիցես այս ամ զսերմանեալդ.
և յամէ ևս կերիցես զմնացորդսն. և
յամին երրորդում սերմանեսջիք, և
հնձեսջիք. տնկեսջիք այգիս՝ և կերի֊
31 ջիք զպտուղ նոցա։ *Եւ եղիցին մնա֊
ցորդքն հրէաստանի արձակել արմատ
'ի խոնարհ՝ և տալ զպտուղ 'ի վեր։
32 *Զի յԵ՟րմ եղիցին մնացեալք. և 'ի
լերին Սիոնի ապրեալք։ զի նախանձ
33 Տ՟ն զօրութ՟ց արար զայս։ *Վասն
այսորիկ այսպէս ասէ Տ՟ր 'ի վ՟ր թա֊
գաւորին Ասորեստանեայց. մի՛ մտցէ
նա 'ի քաղաքս յայս. և մի՛ նետս արկցէ
'ի վ՟ր դորա. և մի՛ փակեսցէ զդա վա֊
հանօք. և մի՛ պաշարեսցէ զդա պատ֊
34 նիշօք։ *Այլ ճանապարհ ընդ որ եկն՝
ընդ նոյն դարձցի. և 'ի քաղաքդ յայդ
35 մի՛ մտցէ։ այսպէս ասէ Տ՟ր։ *Վերա֊
կացու եղէց քաղաքիդ այդմիկ՝ ապրե
ցուցանել զդա վ՟ն իմ և վասն Դաւթի
36 ծառայի իմոյ։ *‖Եւ ել հրեշտակ Տ՟ն ‖4 Թագ.
և սատակեաց 'ի բանակէն Ասորեստա 19. 35.
նեայց. հարիւր և ութսուն և հինգ Տոբ.
հազար։ և յարեան ը՟ առաւօտն՝ գտին 1.21.
37 զայն ա՟մ մարմին մեռեալ։ *Եւ դար Սիր.
ձաւ անդրէն՝ և գնաց Սենեքարիմ ար 48. 24
քայ Ասորեստանեայց. և բնակեցաւ 'ի 1 Մակ.
38 Նինուէ։ *Եւ մինչ դեռ երկիր պագա 7.41.
նէր 'ի տան իւրում. Ասրաքայ կռոց 2 Մակ.
իւրոց. Ադրամելէք՝ և Սարասար որդիք 8.19.
ն՟ր սպանին զնա սրով. և ինքեանք գնա
ցին փախստական 'ի Հայս. և թագաւո
րեաց Ասորդան որդի նորա ընդ նորա։

## Գլ. ԼԸ։

1 Եւ ‖եղև 'ի ժամանակին յայնմիկ. ‖4 Թագ.
հիւանդանալ Եզեկիայ մինչև 'ի 20.1.
մահ։ և եկն առ նա Եսայի որդի Ամօ֊ 2 Մն.
սայ՝ և ասէ ցնա։ այսպէս ասէ Տ՟ր՝ հրա 32.24
ման տուր վ՟ն տան քոյ՝ զի մեռանիս.
2 և ո՛չ կեաս։ *Եւ դարձոյց Եզեկիա
զերեսս իւր յորմ անդր՝ յաղօթս եկաց։
3 *Եւ ասէ՝ ո՛ Տ՟ր. յիշեա՛ զիս Տէր՝ զի
գնացի առաջի քո արդարութ՟բ. ճշ֊
մարիտ սրտիւ. և զհաճոյս առաջի քո
արարի։ և ելաց Եզեկիա լալիւն մեծ։
4 *Եւ եղև բան Տ՟ն առ Եսայի՝ և ասէ։
5 *Երթ՝ և ասա՛ ցԵզեկիայ. այսպ՟ս ասէ
Տ՟ր Ա՟ծ Դաւթի հօր քոյ՝ լուա՛յ բարբառ
ոյ աղօթից քոց. և տեսի զարտասուս
քո.

քո. աՀաւասիկ յաւելում 'ի ժամանակս քո ամս Հնգետասան։ 6 *Եւ 'ի ձեռաց արքային ասորեստանեայց ապրեցուցից զքեզ՝ և զքաղաքդ զայդ. և վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ։ 7 *Եւ այս քեզ նշան 'ի Տ̃է, թէ առնիցէ Ա̃ծ զբանդ զայդ՝ զոր խօսեցաւ։ 8 *ԱՀաւադիկ ես դարձուցանեմ զստուերս աստիճանացդ. ընդ որ իջանէ շողդ զտասան աստիճանաւ տանն քոյ. և դարձուցից զշողդ զտասանեքումբք աստիճանօքդ։ և ել շողն զտասանեքումբք աստիճանօք՝ ընդ որս իջեալ էր ստուերին։ 9 *Աղօթք եզեկիայ արքայի Հրէաստանի 'ի ժամանակի յորում Հիւանդացաւ՝ և յարեաւ 'ի Հիւանդութենէ իւրմէ։ 10 *Ես ասացի 'ի վերանալ աւուրց իմոց. գնացից 'ի դրունս դժոխոց։ թողից զմնացորդս ամաց իմոց։ 11 *Ասացի՝ թէ ոչ ևս տեսից զփրկութի Ա̃յ 'ի վ̃ր երկրի։ և ոչ ևս տեսից զմարդ բնակչօք իւրովք։ 12 *Պակասեցայ յազգատոՀմէ իմմէ. թողի զմնացորդս կենաց իմոց։ ելին, և գնացին յինէն՝ որպէս որ քակէ զտաղաւար կանգնեալ։ եղև ոգի իմ առ յինէն ո̃պ ոստայն ստայնանկաց մերձ 'ի Հատանելոյ։ 13 *Յաւուր յայնմիկ մատնեցայ մինչև յառաւօտ։ իբրև զառիւծ այնպ̃ խորտակեաց զոսկերս իմ։ 14 *Օ՛ի 'ի տուընջենէ մինչև 'ի գիշեր մատնեցայ։ *Իբրև զծիծառն այնպէս ճչեցից. և իբրև զաղաւնի այնպէս մնչեցից. զի նուաղեցան աչք իմ 'ի Հայելոյ 'ի բարձունս երկնից առ Տր̄. որ փրկեաց զիս. և փարատեցոյց զցաւս անձին իմոյ։ 15 *Եւ ինքն կարգեաց զա̃մ ամս իմ 'ի դառնութի անձին իմոյ։ 16 *Տր̄ վ̃ն այսորիկ պատմեցաւ քեզ. և զարթուցեր զոգի իմ. մխիթարեցայ՝ և կեցի։ 17 *ԱՀաւասիկ 'ի խաղաղութի դարձաւ դառնութի իմ. փրկեցեր զանձն իմ, զի մի կորեայց. ընկեցեր յետոյ զա̃մ զմեղս իմ։ 18 *Օ՛ի ոչ թէ որք 'ի դժոխսն են, խոստովան առնին առ քեզ. և ոչ մեռեալք օրՀնեսցեն զքեզ. և ոչ յուսասցեալ են յողորմութի քո՝ որք իջանեն 'ի գուբ։ 19 *Այլ կենդանիք օրՀնեն զքեզ. ո̃պ և ես այսուՀետև մանկունս ծնայց՝ որք պատմեսցեն զարդարութի քո։ 20 *Տր̄ փրկութե̃ իմոյ։ և ոչ դադարեցից օրՀնել զքեզ սաղմոսարանաւ զա̃մ աւուրս կենաց իմոց յանդիման տաճարիդ Ա̃յ։ 21 *Եւ ասէ եսայի ցեզեկիայ։ առ դու պաղատիտս 'ի թզոյ՝ մանրեա և դիր 'ի վ̃ր վիրիդ՝ և ողջասցիս։ 22 *Եւ ասէ եզեկիա. այդ եղիցի նշան, եթէ ելանիցեմ 'ի տունն Ա̃յ։

## Գլ. ԼԹ.

1 Ի ժամանակի ‖ յայնմիկ առաքեաց մարոդաք բաղան՝ որդի բաղադայ արքայի բաբելացւոց Հրեշտակս Հրովարտակօք՝ և պատարագս եզեկիայ. քանզի լուաւ եթէ Հիւանդացաւ մերձ 'ի մաՀ՝ և յարեաւ։ 2 *Եւ ուրախ եղև եզեկիա 'ի նոսա։ և եցոյց նոցա զտունս գանձուց՝ և զխնկոց՝ և զեղոց՝ և զոսկւոյ՝ և զարծաթոյ. և զա̃մ տունս անօթոց գանձու. և զա̃մ ինչ որ էր 'ի գանձս իւր. և ո՛չ ինչ էր՝ զոր ոչ եցոյց նոցա եզեկիա՝ 'ի տան իւրում. և յա̃մ իշխանութե̃ իւրում։ 3 *Եւ եկն եսայի մարգարէ առ եզեկիայ արքայ՝ և ասէ ցնա. զի՞նչ ասեն արքդ այդոքիկ. և ուստի՞ եկեալ են առ քեզ։ և ասէ եզեկիա՝ յերկրէ Հեռաստանէ եկին առ իս 'ի բաբիլոնէ։ 4 *Եւ ասէ եսայի. զի՞նչ տեսին 'ի տան քում։ և ասէ եզեկիա՝ զա̃մ ինչ որ 'ի տան իմում էր՝ տեսին. և ո՛չ ինչ էր 'ի տան իմում, զոր ոչ տեսին. այլև զգանձս ևս զիմ։ 5 *Եւ ասէ ցնա եսայի. արդ լո՛ւր զպատգամս Տն̄ զօրութեց։ 6 *ԱՀա եկեսցեն աւուրք. և առնուցուն զա̃մ ինչ՝ որ 'ի տան քում է. և զոր միանգամ ժողովեցին Հարք քո մինչև ցայսօր. տարցին 'ի բաբիլոն. և մի՛ ինչ ամենևին թողուցուն։ 7 *Այլ ասաց Ա̃ծ. թէ և յորդւոց քոց՝ որք ելանիցեն 'ի քէն՝ զորս դու ծնանիցիս. տարցին՝ և արասցեն ներքինիս 'ի տան թագաւորին բաբիլացւոց։ 8 *Եւ ասէ եզեկիա ցեսայի. բարի է բանդ Տն̄ զոր խօսեցաւ. եղիցի խաղաղութի և արդարութի յաւուրս իմ։

‖ 4 Թագ. 20.12.

## Գլ. Խ.

1 Մխիթարեցէք՝ մխիթարեցէք ըզ ժողովուրդ իմ, ասէ Ա̃ծ։ 2 *ՔաՀանայքդ խօսեցարո՛ւք 'ի սիրտ Ե̃էմի. և մխիթարեցէք զդա. զի լի եղև տառապանօք. թողեալ լիցին դմա մեղք իւր. զի ընկալաւ 'ի ձեռանէ Տն̄ կրկին զՀատուցումն մեղաց իւրոց։ 3 *‖ Ձայն բարբառոյ յանապատի. պատրաստ արարէք զճանապարՀս Տն̄. և ուղիղ արարէք զշաւիղս Ա̃յ մերոյ։ 4 *Ա̃մ ձորք լցցին. և ա̃մ լերինք և բլուրք խոնարՀեսցին։ և եղիցին ա̃մ դժուարինքն 'ի դիւրինս. և առապարքն 'ի դաշտս։ 5 *Եւ երևեսցին փառքն Տն̄. և տեսցէ ա̃մ մարմին զփրկութի Ա̃յ՝ զի Տր̄ խօսեցաւ։ 6 *Ձայն՝ որ ասէ՝ գոչեա. և ասեմ, զի՞նչ գոչեցից։ գոչեա՝ ‖ ա̃մ մարմին խոտ է. և ա̃մ փառք

‖ Մատ. 3. 3. Մարկ. 1. 3. Ղուկ. 3. 4. Յոհ. 1. 23.

‖ Սիրաք. 14.18.

մարդոյ իբրեւ զծաղիկ խոտոյ: 7 * Ցամաքեցաւ խոտն. եւ թօթափեցաւ ծաղիկն. զի ոգի Տն շնչեաց 'ի նա. արդարեւ՝ խոտ է ժողովուրդս այս:
8 * Ցամաքեցաւ խոտն. եւ թօթափեցաւ ծաղիկն. եւ բան Տն մնայ յաւիտեան: 9 * Ե՛լ 'ի վ՛ր լերինդ բարձու՝ աւետարանիչդ Սիոնի: բարձրացո՛ զօրութբ զբարբառ քո՝ աւետարանիչդ Եր՛մի: բարձրացուցէք. մի՛ երկնչիք. ասա՛ ցքաղաքդ Յուդայ: 10 * Ահաւասիկ Այ ձեր. ահաւասիկ Տր Տր՝ գայ զօրութբ եւ բազուկն Տրութբ իւրով. ահաւասիկ վարձք իւր ընդ իւր. եւ գործք առաջի նր: 11 * Իբրեւ հովիւ մի հովուեսցէ զխաշինս իւր. եւ բազկաւ իւրով ժողովեսցէ զգառինս. եւ 'ի ծոց իւր կրեսցէ զնոսա. եւ մխիթար լիցի յղեացն: 12 * Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս. եւ զերկինս թզաւ՝ եւ զերկիր ամ բուռ. ո՞ կշռեաց զլերինս կշռով. եւ զդաշտս կշռորդօք: 13 * Ո՞ գիտաց զմիտս Տն. եւ ո՞ եղեւ նմա խորհրդակից՝ եթէ խելամուտ արասցէ զնա: 14 * Կամ ընդ ո՞ւմ խորհեցաւ՝ եւ արար զնա խելամուտ. կամ ո՞ եցոյց նմա զդատաստան՝ եւ զճանապարհս իմաստութե: կամ ո՛ ետ նմա փոխ յառաջագոյն՝ եւ հատուցանիցէ նմա: 15 * Եթէ ամ հեթանոսք իբրեւ զկաթիլ մի 'ի դուլէ են. եւ իբրեւ զմէտ մի 'ի կշռոյ համարեցան. եւ իբրեւ շիթք 'ի բերանոյ համարեսցին: 16 * Եթէ լիբանան չէ բաւական յայրումն. եւ ամ չորքոտանիք չեն բաւական յողջակէզս: 17 * Եւ ամ հեթանոսք ոչինչ են. եւ յոչինչ համարեցան նմա: 18 * Ընդ ո՞ւմ նմանեցուցիք զՏր. եւ որում նմանութե նմանեցուցիք զնա: 19 * Մի թէ պատկեր կոփեաց զնա հիւսն. կամ ոսկերիչ ձուլեաց զոսկի. եւ պատեաց զնա ոսկւով. 'ի նմանութի պատկերի կերպարանեաց զնա: 20 * Զփայտ անփուտ ընտրեաց հիւսն. եւ իմաստութբ հնարս խնդրէ. զիարդ կանգնեսցէ զնա. զի մի՛ շարժեսցի:
21 * Ո՞չ լուէք՝ եւ ո՞չ իմանայք՝ եւ ո՞չ պատմեցաւ ձեզ 'ի սկզբանէ. ո՞չ գիտացիք՝ թէ ո՛ հաստատեաց զհիմունս երկրի: 22 * Որ ունի զծիր երկրի. եւ բնակիչք նր իբրեւ զմարախ որ կանգնեաց զերկինս իբրեւ զկամար. եւ ձգեաց իբրեւ զխորան. եւ հաստատեաց զերկիր բնակել 'ի նմա: 23 * Որ տայ զիշխանս յոչինչ իշխանութի. եւ զերկիր իբրեւ զոչինչ արար: 24 * Զի ո՛չ սերմանեսցեն՝ եւ ո՛չ տնկեսցեն. եւ ո՛չ հաստատեսցի յերկրի արմատ նց. շնչեաց 'ի նոսա՝ եւ ցամաքեցան. եւ փոթորիկ իբրեւ զխուիւ առ 25 ցէ զնս: * Արդ՝ ո՞ւմ նմանեցուցիք զիս. 26 եւ բարձրացայց ասէ Սրբն: * Համբարձէք 'ի բարձունս զաչս ձեր՝ եւ տեսէք. ո՛ հաստատեաց զայս ամ: ո՛ հանէ ըզ զարդ նց. եւ զամենեսեան յանուանէ կոչէ. բազում փառօք եւ սաստկութբ զօրութե՝ եւ ոչ մի ինչ ծածկեցաւ 'ի 27 քէն: * Մի՛ ասիցես յակոբ. եւ զինչ խօսեցար իէլ. թէ ծածկեցան ճանապարհք իմ յԱյ. եւ Այ իմ եբարձ զիրաւունս իմ. եւ մեկնեցան: 28 * Եւ այժմ ո՛չ ծանեար. եթէ չէր լուեալ՝ Այ յաւիտենական. Այ որ հաստատեաց զծագս երկրի. ո՛չ քաղցիցէ. եւ ոչ վաստակեսցի. եւ չիք քննութի իմաստութե նր: 29 * Տայ քաղցելոց զզօրութի. եւ անցաւաց զտրտմութիւն: 30 * Քաղցիցեն երիտասարդք. եւ վաստակեսցին մանկունք. եւ ընտիրք անզօրք եղիցին: 31 * Այլ որք սպասեն Տն, նորոգեսցին զօրութբ. նորափետուր զարդարեսցին իբրեւ զարծուիս. ընթասցեն, եւ մի՛ վաստակեսցին. գնասցեն՝ եւ մի՛ քաղցիցեն:

## ԳԼ: ԽԱ:

1 Նորոգեցարո՛ւք առ իս կղզիք. զի իշխանք նորոգեսցին զօրութբ. մերձեսցին՝ խօսեսցին միանգամայն. եւ ապա զիրաւունս պատմեսցեն:
2 * Ո՛ զարթոյց յարեւելից զարդարութի. եւ կոչեաց զնա զհետ իւր. երթիցէ՝ եւ տայցէ զհատուցումն յանդիման հեթանոսաց: զարհուրեցուսցէ զթագաւորս. եւ տայցէ հողոյ զսուրս նոցա: եւ իբրեւ զխուիւ մերժեսցէ զնետս նց: 3 * Եւ արասցէ զնս փախստականս. եւ անցցէ խաղաղութբ զճանապարհ ոտից իւրոց: արդ՝ ասիցէք՝ եթէ ոչ գայցէ:
4 * Ո՛ ազդեաց՝ եւ արար զայս ամ. կոչեաց զնա՝ որ կոչէրն յազգաց առաջնոց: Ես Տր առաջին՝. եւ ես նոյն եմ առ 5 յապայ: * Տեսին զիս հեթանոսք՝ եւ երկեան. եւ սարսեցան ամ ծագք երկրի: 6 մերձեցան՝ եւ եկին 'ի միասին: * Եդին 'ի միտ իւրաքանչիւր ընկերի եւ եղբօր 7 օգնական լինել: եւ ասիցեն: * Քաջալերեսցէ հիւսն զդարբին. կռել կոփել զուռն հարկանել. եւ ասիցէ նպաստ բարի եղեւ ինձ: եւ բեւեռեսցեն զնս բեւեռօք. եւ դնիցեն 'ի դետնի՝ եւ ոչ շարժես 8 ցին: * Այլ դու իէլ ծառայ իմ. յակոբ՝ զոր ընտրեցի. զաւակ աբրահամու՝ զոր սիրեցի: 9 * Որում օգնական եղէ 'ի ծագաց երկրի: եւ 'ի դիտաց նր կոչեցի զքեզ. եւ ասացի՝ թէ ծառայ իմ ես դու. եւ ընտրեցի զքեզ. եւ ոչ 10 թողի զքեզ: * Մի՛ երկնչիր՝ զի ընդ

քեզ

Յակոբ. 1.10. 1. Պետր. 1.24. Յովհան. 10.11. Եզեկիէլ. 34. 23. եւ 37.24. Հռովմ. 11.34. 1. Կորն. 2.16. Իմաստ. 9.13. Գործ. 17.29.

Ո՞ հանէ 'ի թէ... Ես. 44.6. 48.12. Յայտ. 1. 8. եւ 17. եւ 22. 13.

քեզ եմ. մի խաբիր՝ զի ես եմ Ա՟Ծ քո. որ զօրացուցի զքեզ. և օգնեցի քեզ. և զգուշացայ քեզ աջով արդարութե՟ իմոյ: * 11 Ահաւադիկ ամաչեսցեն՝ և պատկառեսցին ամ՟ հակառակորդք քո. և եղիցին նոքա իբրև զչեղեալս. և կորիցեն ամ՟ դատախազք քո: * 12 Խնդրեսցես զնոսա. և ոչ գտցես զմարդս՝ որք թշնամանեցին զքեզ. և եղիցին իբրև զչեղեալս պատերազմօղքն քո: * 13 Զի ես եմ Տր՟ Ա՟Ծ քո՝ որ ունիմ զաջո՟յ ձեռանէ քումմէ: որ ասեմ ցքեզ՝ թէ մի երկնչիր. ես օգնեցի քեզ: * 14 Մի երկնչիր, որ ընդ յակոբեան զածածդ իս՟րայէլեան. ես օգնեցի քեզ ասէ Ա՟Ծ որ փրկելոցն է զքեզ ս՟րբն իՂի: * 15 Ահաւադիկ արարից զքեզ իբրև զանիւս նորս՝ սղոցաձևս կամնասայլից. կասեսցես զլերինս, և մանրեսցես զբլբլուրս. արասցես զնո՟ իբրև զփոշի: * 16 Հո՟ հոսեսցես. հողմք առցեն զնո՟. և մրրիկք ցրուեսցեն: բայց դու ուրախ լիցիս ՚ի Տր՟ ՚ի սրբութիւն իՂի: * 17 Հո՟ ցնծասցեն տնանկք և կարօտեալք որք խնդրեսցեն զջուր, և ոչ գտանիցեն. և լեզուք նո՟ց ՚ի ծարաւոյ ցամաքեսցին: ես Տր՟ Ա՟Ծ լուայց նոցա, Ա՟Ծ իՂի. և ոչ թողից զնո՟: * 18 Այլ բացից զգետս ՚ի վ՟ր լերանց. և ՚ի մէջ դաշտաց աղբիւրս: արարից զանապատն ՚ի ձահիձս ջուրց. և զերկիր ծարաւուտ ՚ի վտակս: * 19 Հո՟ բղխեցուցից յանջուր երկրին զմայրն. զտօսախն. զմուրտն. և զնոճն. և զսօսն. զսարդն. և զսարոյն. և զկաղամախն. և զգին. և զփայտն իւղոյ: * 20 Զի տեսցեն, և գիտասցեն, և իմասցին, և ծանիցեն ՚ի միասին՝ եթէ ձեռն Տ՟ն արար զայս ամ՟. և ս՟րբն իՂի հաստատեաց: * 21 Մերձեալ են իրաւունք ձեր՝ ասէ Տր՟ Ա՟Ծ: մերձեալ են իրաւունք ձեր՝ ասէ թագաւորն յակոբայ: * 22 Մերձեսցին, և պատմեսցեն ձեզ՝ որ ինչ անցք անցանելոց իցեն: և կամ զառաջինսն եթէ զինչ էին, ասացէք. ՚ի միտ դիցուք, և գիտասցուք զինչ առաջին և զինչ առյապայ: * 23 Ասացէք մեզ՝ պատմեցէք մեզ՝ որ ինչ ՚ի վախճանին լինիցի, և գիտասցուք. թէ աստուածք էք, բարի արարէք. չար արարէք. զի տեսցուք միանգամայն, և զարմասցուք՝ թէ ուստի իցէք դուք: * 24 Հո՟ ուստի գործուած ձեր: զի յերկրէ պիղծս ընտրեցին զձեզ: * 25 Այլ ես զարթուցանեմ զհիւսիսայինն՝ և զարևելեան. կոչեսցին յանուն իմ. եկեսցեն իշխանք. և իբրև զկաւ բրտի՝ զոր բրուտն կոխէ՝ այնպէս կոխիցիք: * 26 Ո՞ պատմեսցէ զայն, որ ՚ի սկզբանէն՝ զի գիտասցուք. և զեւս յառաջագոյնն. և ասասցուք՝ եթէ ճշմարիտ է: չիք, որ ասէ յառաջագոյն. և ոչ, որ լսէ զբանս ձեր: * 27 Սկիզբն արարից զսիոն. և եդէմ միխ… 28 թարեցից ՚ի ճանապարհին: * Զի ՚ի հեթանոսաց աւադիկ ոչ ոք է. և ՚ի կռոց նո՟ց ոչոք է՝ որ պատմէ. և եթէ հարցից ես զնոսա, թէ ուստի էք. ոչ 29 տացեն ինձ զպատասխանի: * Զի ընդունայն են. որք առնեն զձեզ. և ՚ի նոտիք են. որք ստեղծանեն զձեզ:

*[Left margin, beside verse 17:]* ցամաքեցին

*[Right margin, beside verse 27:]* և չէ՟ն

## ԳԼ: ԽԲ:

1 Յակոբ ‖ ծառայ իմ, օգնական եղէց նմա. և իՂէլ ընտրեալ իմ, զոր ընկալաւ անձն իմ: Ետու զոգի իմ ՚ի վ՟ր նո՟. և իրաւունս հեթանոսաց 2 պատմեսցէ: * Մի աղաղակեսցէ, և մի վիճեսցի, և մի ոք լուիցէ արտաքոյ 3 զբարբառ նո՟: * Զեղէգն ջաղջախեալ մի բեկցէ. և զպատրոյկն առկայծեալ 4 մի շիջուսցէ: * Այլ հանցէ ՚ի ճշմարտութի՟ զիրաւունս: ծագեսցի՝ և մի խորտակեսցի. մինչև դիցէ յերկրի զդատաստան. և յանուն նո՟ հեթա5 նոսք յուսասցին: * Այսպէս ասէ Տր՟ Ա՟Ծ՝ որ արար զերկինս, և կանգնեաց զնա. որ հաստատեաց զերկիր՝ և որ ՚ի նմա. և ետ շունչ մարդկան, որ ՚ի վ՟ր նո՟. և ոգի ամենեցուն, որք կոխեն 6 զնա: * Ես Տր՟ Ա՟Ծ՝ կոչեցի զքեզ արդարութե՟՝ կալայ զաջոյ ձեռանէ քումմէ՝ և զօրացուցի զքեզ. ‖ և ետու զքեզ յուխտ ազգի՝ և ՚ի լոյս հեթանոսաց: 7 * Բանալ զաչս կուրաց. հանել զկապեալս ՚ի բանտէ՝ և ՚ի տանէ կապա8 նաց՝ որք նստէին ՚ի խաւարի: * ‖ Ես Տր՟ Ա՟Ծ՝ այս է անուն իմ. զփառս իմ այլում ոչ տաց. ոչ զքաջութիւս իմ 9 դրօշելոց: * Որինչ ՚ի սկզբանէն էր, այն եկն՝ էհաս. և զնորս ես պատմեցից ձեզ. և մինչև պատմեալ ցուցաւ 10 ձեզ: * Օրհնեցէք զՏր՟ յօրհնութի՟ նոր. զի իշխանութի՟ նո՟ ՚ի բարձունս փառաւորի: և անուն նորա ՚ի ծագաց երկրի. որք իջանէին ՚ի ծով նաւուք, 11 կղզիք՝ և բնակիչք նո՟ց: * Ուրախ եղիցի անապատն՝ և աւանք նո՟՝ հանգրուանք՝ և բնակիչք կեդարու՝ ուրախ եղիցին բնակիչք վիմին. ՚ի գլխոց լե12 րանց գոչեսցեն: * Տացեն զփառս ա՟յ. և զքաջութի՟ նո՟ կղզիք պատմեսցեն: 13 * Տր՟ Ա՟Ծ զօրութե՟ց եկեսցէ՝ և հարցէ զպատերազմ. յարուսցէ զնախանձ՝ և գոչեսցէ ՚ի վ՟ր թշնամեաց իւրոց զօ14 րութե՟: * Լուռ եղէ ՚ի սկզբանէ. մի թէ միշտ լռիցեմ. և անսայցեմ. ժուժկա_

*[Right margin:]* ‖ Մատթ. 12.18. ‖ Մար. 49. 6. ‖ Մար. 48. 11.

կալեցի իբրև ծննդականն . արդ զար հուրեցուցից՝ և ցամաքեցուցից միան_ գամայն ։ 15 * Աւերինս՝ և զբլուրս յաւա կեցից . և զամ՝ խոտ նց ցամաքեցու_ ցից ։ եդից զգետս ՚ի կղզիս . և զխաղս ցամաքեցուցից ։ 16 * Առաջնորդեցից կու րաց ՚ի ճանապարհ՝ զոր ոչ գիտիցեն . և ընդ շաւիղս՝ զոր ոչ գիտէին՝ գնա_ ցուցից զնս ։ արարից նոցա զխաւարն ՚ի լոյս . և զդժուարինս՝ զայս բանս ա_ րարից առ նոսա . և ոչ թողից զնոսա ։ 17 * Դայց նոքա դարձան յետս ։ յետս ամաչեցէք զամօթ մեծ՝ ոյք յուսա_ ցեալդ էք ՚ի դրօշեալս . և ասէք ցձու_ լածոյսն . թէ աստուածք մեր դուք էք ։ 18 * Խուլք լուարուք . և կոյրք հայեցա_ րուք տեսանել ։ 19 * Եւ ո՛վ է կոյրն՝ եթէ ոչ ծառայքն իմ . և ո՛վ են խուլքն՝ ե_ թէ ոչ որք տիրեննն նոցա . ո՛վ է կոյրն՝ եթէ ոչ հեռացեալն ։ և կուրացան ծա ռայքն Այ ։ 20 * Տեսէք բազում անգամ՝ և ոչ զգուշացայք . բաց էին ականջք ձեր՝ և ո՛չ լուայք ։ 21 * Տր Ած կամէր՝ զի արդարացուսցէ՝ և բարձրացուսցէ զօրհնութի ։ 22 * Եւ տեսի՝ զի եղև ժո ղովուրդն յափշտակեալ՝ և յաւար մատ նեալ ։ յամ՝ շտեմարանս որոգայթք՝ և յամ՝ ապարանս միանգամայն ։ ուրև թաքուցին զնս, եղեն ՚ի յափշտակութի . և ոչոք էր՝ որ փրկէր ։ յաւար, և ոչոք էր, որ ասէր՝ եթէ տո՛ւր ՚ի դուրս ։ 23 * Ո՛վ է ՚ի ձէնջ՝ որ ունկնդիր լինիցի այսմ՝ ամի . և ՚ի միտ առնուցու՝ որինչ յապայն դալոց իցէ ։ 24 * Ո՛վ ետ ՚ի յափշտա կութի զյակոբ՝ և զիէլ աւարառուաց ։ ո՞չ ապաքէն Ած, որում մեղանն . և ոչ կամեցան գնալ զճանապարհս նր . և ոչ լսել օրինաց նր ։ 25 * Եւ էած ՚ի վր նց զսրտմտութի բարկութե իւրոյ . և պա տեաց զնոսա պատերազմ . և շուրջ զնո քօք հրձիգք . և ոչ գիտացին իւրաքանչ իւրոք ՚ի նոյանէ . և ո՛չ եդին ՚ի միտ ։

## ԳԼ. ԽԳ.

1 Եւ արդ՝ այսպէս ասէ Տր Ած՝ որ արար զքեզ յակոբ . և որ ստեղծն զքեզ իէլ ։ մի երկնչիր, զի փրկեցի զքեզ . և կոչեցի քեզ զանուն քո՝ թէ իմ ես ։ 2 * Եւ եթէ անցանիցես ընդ ջուրս, ընդ քեզ եմ . և գետք զքեզ մի ողողեսցեն ։ և եթէ անցանիցես ընդ հուր՝ մի այ_ րեսցիս, և բոց նր զքեզ մի կիզցէ ։ 3 * Զի ես եմ Տր Ած քո սրբն իէլի՝ որ փրկեմ զքեզ ։ արարի փրկանս քո զե գիպտոս՝ և զեթէովպիայ՝ և զսուհէն քեզ փոխանակեցի ։ 4 * Ուստի և պատ_ ուական եղեր առաջի իմ . փառա ւորեցար՝ և ես սիրեցի զքեզ . և տաց զմարդիկ փոխանակ քո . և զիշխանս փո 5 խանակ գլխոյ քոյ ։ * Մի երկնչիր՝ զի ընդ քեզ եմ . յարևելից ածից զզաւակ քո . և յարևմտից ժողովեցից զքեզ ։ 6 * Ասացից հիւսիսոյ՝ ած . և հարաւոյ՝ թէ մի արգելուր . ածէք զորդիս իմ յերկրէ հեռաստանէ . և զդստերս իմ 7 ՚ի ծագաց երկրի ։ * Եւ զամն , որք միանգամ կոչեցեալ են յանուն իմ . զի փառօք իմովք հաստատեցի զնա՝ և 8 ստեղծի զնա՝ և արարի զնա ։ * Եւ հանի զժողովուրդն կոյր ։ և թէպէտ աչք են, սակայն նոյնպէս կուրացեալք են , և խցեալք են ականջք իւրեանց ։ 9 * Ամենայն ազգք ժողովեցան ՚ի միա_ սին . և իշխանք ժողովեսցին ՚ի նոցա_ նէն . ո՞ պատմեսցէ զայս . և կամ որինչ ՚ի սկզբանէն էր, ո՞ ազդ արասցէ ձեզ . ածցեն զվկայս իւրեանց՝ և արդարասցին . լուիցեն՝ և ասասցեն զճշմարիտն ։ 10 * Եղերուք ինձ վկայք՝ և ես ձեզ վկայ՝ ասէ Տր Ած՝ և ծառայ իմ զոր ընտ_ րեցի . զի գիտասջիք, և հաւատասջիք ինձ . և ՚ի միտ առնուցուք՝ թէ ես եմ . յառաջ քան զիս ո՛չ եղև այլ . և յետ իմ 11 ոչ եղիցի ։ * Ես եմ Ած՝ և չիք որ բաց 12 յինէն՝ որ փրկիցէ ։ * Պատմեցի՝ և փրկե ցի . նախատեցի՝ և ոչո՛ք էր ՚ի միջի ձե_ րում օտար . դուք ինքնին իսկ վկայ 13 էք ինձ ։ * Եւ ես Տր Ած ՚ի սկզբանէ , և և ս ։ և ո՛չոք իցէ . որ ՚ի ձեռաց իմոց հա նիցէ ։ արարից՝ և ո՛չոք իցէ՝ որ դարձու 14 ցանիցէ ։ * Այսպէս ասէ Տր Ած . որ փրկելոցն է զձեզ՝ սրբն իէլի ։ վն ձեր ա_ ռաքեցից ՚ի բաբիլոն . և ընդոստուցից փախստեայս զամենեսին . և քաղդէացիքն 15 նաւուք պաշարեսցին ։ * Ես Տր Ած սրբն ձեր . որ յայտ արարի ձեզ զիթա_ 16 գաւորն իէլի ։ * Այսպէս ասէ Տր՝ որ արար ճանապարհ ընդ ծով . և ՚ի ջուրս 17 սաստիկս զշաւիղս ։ * Որ հանէ զկառս՝ և զերիվարս . և բազում զօրս սաստիկս . այլ ննջեցին , և ո՛չ յարիցեն . շիջան 18 իբրև զպատրոյկ շիջեալ ։ * Մի յիշէք զառաջինսն . և զհինսն մի ածէք զմտաւ ։ 19 * Զի ես առնեմ նոր գործեմ . որ այժմ յայտնեսցի , և ծանիջիք . և արա րից ճանապարհ ընդ անապատ . և յեր կրի անջրդի գետս գնացուցից ։ 20 * Օրհնեսցեն զիս գազանք անապատի . համբարուք և դստերք ջայլամանց . զի ետու ես ջուր յանապատ . և գետս յերկիր անջրդի . արբուցանել զազգն 21 իմ ընտրեալ ։ * Եւ ժողովուրդ իմ զոր ստացայ պատմել զքաջութիս իմ ։ 22 * Ոչ այժմ ինչ կոչեցի զքեզ յակոբ . 23 և ո՛չ աշխատ արարի զքեզ իէլ ։ * Ոչ մատուցեր ինձ խաշինս ողջակիզաց քոյ .

քոց. և ո՛չ զոհիւք քովք փառաւորե-
ցեր զիս. ո՛չ ծառայեցեր ինձ պա-
տարագօք քովք. և ո՛չ աշխատ արարի
զքեզ 'ի ծախս կնդրկայ: * Ոչ գնեցեր 24
ինձ խունկս արծաթոյ. և ո՛չ ցանկա-
ցայ ճարպոյ զոհից քոց՝ այլ 'ի մեղս քո
և յանօրէնութիւնս քո վերակացու եղէ
քեզ: * Ես եմ՝ ես եմ նոյն, որ ջնջեմ 25
զանօրէնութիւնս քո վ՛ն իմ. և զմեղս
քո այլ ո՛չ ևս յիշեցից: * Բայց քեզ 26
յո՛ւշ լիցի և ընդ միմեանս դատիցուք:
ասա՛ դու նախ զանօրէնութիւնս քո՝ զի
արդարասցիս: * Հարքն ձեր նախ մե- 27
ղան. և իշխանքն ձեր անօրինեցան յիս:
* Եւ պղծեցին իշխանք զսրբութիւնս 28
իմ. և մատնեցի 'ի կորուստ զյակոբ՝
և զիէլ 'ի նախատինս:

## ԳԼ: ԽԴ.

Երեմ. 30. 10. և 46. 27.

Բայց արդ լո՛ւր յակոբ ծառայ իմ. 1
և իէլ զոր ընտրեցի: * Այսպէս 2
ասէ Տր Ած քո՝ որ արար զքեզ. և
ստեղծ զքեզ յորովայնի. և տակաւին
օգնականութիւն գտցես: մի՛ երկնչիր
ծառայ իմ յակոբ՝ և սիրեցեալդ իմ
իէլ՝ զոր ընտրեցի: * Զի ես տաց ըզ 3
ջուր 'ի ծարաւու՝ որոց գնան յանջրդ-
ւոջ. եդից զոգի իմ 'ի վերայ զաւակի
քո՝ և զօրհնութիւնս իմ 'ի վ՛ն որդւոց
քոց: * Եւ զուարճասցին իբրև զխոտ 4
ջրարբի. և իբրև զուռ 'ի մէջ ջուրց
գնացից: * Սա՛ ասիցէ՝ Այ՟ եմ ես. 5
և միւսն խրախոյս բարձցէ յանուն յ՟
յակոբայ. և միւսն ևս գիր հանցէ ձե-
ռամբ իւրով՝ թէ Այ՟ եմ ես. և յա-
նուն իէլի խրախոյս բարձցէ: * Այսպ 6
ասէ Ած թագաւորն իէլի. որ փր-
կեաց զնա Ած զօրութեանց. ես առա
ջին՝ և ես առյապայ՝ բաց յինէն այլ ո՛չ
գոյ Ած: * Ո՞վ է իբրև զիս, յառաջ 7
կացցէ. ձայն տացէ. պատմեսցէ՝ և
պատրաստեսցի ինձ. յորմէ հետէ արա
րի զմարդն յաւիտեան. և որինչ գա-
լոցն իցէ, մինչև եկեալ իցէ, պատմես
ցեն ձեզ: * Մի՛ զարմանայք, և մի՛ պատ 8
կառիք. ո՛չ ապաքէն 'ի սկզբանէ լուա՛յք՝
և պատմեցի ձեզ: դուք ձեզէն իսկ
վկայէք ինձ. եթէ գուցէ այլ բաց
յինէն: և յայնժամ իսկ ոչինչ էին
ամքեան: * Որք ստեղծանէին. և դրո 9
շէին զանօտիսն. որք առնէին ըստ ցան
կութե իւրեանց. որք ոչ օգնեսցեն նմ.
և վկայք դուք էք նոցա. զի ոչ տեսա
նեն՝ և ոչ իմանան. զի ամաչեսցեն: * Որ 10
ստեղծանէ զաստուածն. և ձուլէ
զդրօշեալն յանօգուտ: * Եւ ամենե- 11
քին որք հաղորդեսցին նմա. այլ ամա
չեսցեն ամենեքեան՝ որք ստեղծանեն

Վեր. 41. 4. Ներքև 48. 12. Յայտ. 1. 17. և 22. 13.

կուռս. և դրօշեն զանօգուտս. և ամե
նեքեան ուստի եղեն, ցամաքեցան.
խլացեալք 'ի մարդկանէ. ժողովեսցին
ամենեքեան. յանդիման կացցեն 'ի միա
սին. ամաչեսցեն՝ յամօթ լիցին առ հա
12 սարակ: * Զի թեկեաց հիւսն զգոր
ծի իւր. զուրագ սրեաց: և կոփեաց
նովաւ. դրով գործեաց՝ և դրօշեաց
զնա. և զօրութե բազկի իւրոյ կանգ-
նեաց զնա. քաղցիցի՝ և տկարասցի, և
13 ոչ արբցէ զջուր: * Ընտրեաց հիւսն
զփայտ. չափով կշռեաց զնա՝ և դրօ
շեաց 'ի նմանութի պատկերի. դրով
կարգեաց զնա. և մածոյց սոսնձով.
և արար զնա 'ի պատկեր առն. և 'ի
զարդ գեղոյ երեսաց մարդոյ. հաս-
14 տատեաց զնա 'ի տան իւրում: * Զայն
փայտ զոր էհատն. զսարոյն՝ կամ զսօճն.
զկաղնին կամ զթեղօշն. զոր տնկեաց
15 Տր՝ և աճեցոյց անձրև: * Զի իցէ մարդ-
կան այրել. առեալ 'ի նմանէ այրեաց՝
և ջեռաւ: և 'ի կիսոյն արար հաց. և
զկէսն արար պատկերս. և երկիր-
եպագ նոցա. և զոր իւրովն պատկեր
գործեաց. անկեալ առաջի այնմ եր-
16 կիր պագանէ: * Զորոյ զկէսն այրեաց
'ի խարուկի. և եփեաց կայծակամբք
նր զհաց. և խորովեաց զմիս. եկեր՝ և
յագեցաւ՝ և ջեռաւ՝ և ասէ՝ վա՛շ ինձ,
17 զի ջեռայ՝ և տեսի զկրակ: * Եւ զկէսն
արար ած դրօշեալ. և խոնարհեալ
երկիրպագանէ նմա. յաղօթս կայ առ
նա՝ և ասէ. փրկեա՛ զիս, զի ած իմ ես
18 դու: * Ո՛չ առին 'ի միտ իմանալ. զի
շլացան տեսանել աչօք իւրեանց. և
19 իմանալ սրտիւք: * Եւ ոչ ածին զմտաւ.
զի ո՛չ ծանեան խորհրդօք. թէ զկէս
փայտին այրեցին 'ի հուր. և 'ի վ՛ն կայ
ծականց նր հաց արարին՝ և զմիս խորո
վեցին՝ և կերին. և զկէսն 'ի նմանէ
արարին պատկեր՝ և երկիր պագանեն
20 նմա: * Գիտասջիր՝ զի մի՛ խիր է սիրտ
նց՝ և մոլորեալք են. և ոչոք 'ի նոցանէ
կարէ փրկել զանձինս նոցա. տեսիք
և ոչ ասացիք՝ թէ խաբէութի էր 'ի
21 ձեռս մեր: * Յո՛ւշ լիցի քեզ այդ յա-
կոբ. և իէլ՝ զի ծառայ իմ ես դու. ինձ
ստեղծի զքեզ 'ի ծառայութի. և իէլ
22 մի՛ մոռանար զիս: * Զի ահաւասիկ
ջնջեմ իբրև զամպ զանօրէնութիւնս քո.
և իբրև զմէգ զմեղս քո. դա՛րձ առ իս՝
23 և փրկեցից զքեզ: * Ուրա՛խ լերուք եր
կինք՝ զի ողորմեցաւ Ած իէլի. փո՛ղ
հարէք հիմունք երկրի. գոչեցէք լե-
րինք զուրախութի. բլուրք, և ամե-
նայն ծառք որք 'ի նոսա. զի փրկեաց
Ած զյակոբ. և իէլ փառաւորեսցի:
24 * Այսպէս ասէ Տր՝ որ փրկեացն զքեզ.

Իմաստ. 13. 11.

և ստեղծ զքեզ յորովայնէ. Ես եմ Տր̃՝ որ առնեմ, և կատարեմ զա̃մ. ձգեցի զերկինս միայն, և հաստատեցի զերկիր: *25 Ո՞ պղծէ զնշանս վհկաց. և զգուշակս ՚ի սրտից. և ո՞ դարձուցանէ զիմաստունս յետս. և զխորհուրդս նց̃ յիմարեցուցանէ: *26 Եւ հաստատէ զբանս ծառայից իւրոց. և զխորհուրդս հրեշտակաց իւրոց արդարացուցանէ. Ես եմ, որ ասեմ ցե̃մ, թէ բնակեսջիր. և ցքաղաքսն հրէաստանի՝ թէ շինիջիք վերստին. և զաւերակս նց̃ կանգնեցից: *27 Որ ասեմ ցանդունդս՝ թէ աւերեսջիր. և զգետս նց̃ թէ ցամաքեցուցից: *28 Որ ասեմ ցկիւրոս՝ թէ իմաստնասջիր. և զա̃մ կամս իմ արասցես. որ ասեմ ցե̃մ թէ շինիջիր. և զտաճարն իմ սուրբ հաստատեցից:

Եւ զգետս քոյս ցամաքեցուցից

## Գլ: ԽԵ:

1 Այսպէս ասէ Տր̃ Ա̃ծ օծելոյն իւրում՝ կիւրոսի, զորոյ կալայ զաջոյ ձեռանէ նորա՝ հնազանդեցուցանել առաջի նորա զազգս, և զզօրութի̃ թագաւորաց խորտակեցից. բացից առաջի նորա զդրունս. և քաղաքք մի̃ փակեսցին: *2 Ես երթայց առաջի քո. զլերինս հարթեցից. և զդրունս պղնձիս խորտակեցից. և զնիգս երկաթիս փշրեցից: *3 Եւ տաց քեզ զգանձս խաւարինս. և զաւանդս աներևոյթս բացից քեզ. զի ծանիցես, թէ ես եմ Տր̃ Ա̃ծ. որ կոչեցի զանուն քո՝ Ա̃ծն Իղ̃ի: *4 Վասն յակոբայ ծառայի իմոյ և իսրայէլի ընտրելոյ. ես կոչեցի քեզ զանուն քո՝ և ընկալայ զքեզ. և դու զիս ոչ ծանեար. թէ ես եմ Տր̃ Ա̃ծ. և չիք այլ ոք: *5 Ես՝ Տր̃ և ոչ գոյ այլ բաց յինէն ոչ գոյ Ա̃ծ. զգօտի ածի քեզ՝ և ոչ ծանեար զիս: *6 Զի գիտասցեն ա̃ք՝ որք յարևելից՝ և որք յարևմտից՝ զի բաց յինէն այլ ոք ոչ գոյ. թէ ես եմ Տր̃ Ա̃ծ և չիք այլ ոք: *7 Ես եմ, որ հաստատեցի զլոյս՝ և արարի զխաւար. ես եմ, որ առնեմ զխաղաղութի̃ և հաստատեմ զչար. Ես եմ Տր̃ Ա̃ծ որ առնեմ զայս ա̃մ: *8 Ուրախ լիցին երկինք ՚ի վերուստ. և ամպք ցօղեսցեն զարդարութի̃: բղխեսցէ երկիր զողորմութի̃. և զարդարութի̃ առ հասարակ բղխեսցէ. Ես եմ Տր̃՝ որ հաստատեցի զքեզ իբրև զլաւ իմն: *9 Ստեղծի զքեզ իբրև զկաւ բրտի. միթէ զօրն ա̃մ հերկէ, որ հերկէն զերկիր: || միթէ ասիցէ կաւն ցբրուտն՝ զի՞ կաս՝ զի ոչ գործես. չիք քո ձեռք: միթէ ասիցէ ստեղծուածն ցստեղծիչն իւր՝ թէ ընդէ՞ր այդպէս ստեղծեր զիս: *10 Վա̃յ որ ասէ ցհայր իւր՝ թէ ընդէր ծնար զիս. կամ ցմայր իւր՝ թէ ընդէր երկնեցեր զիս: *11 Զի այսպէս ասէ Տր̃ Ա̃ծ Իղ̃ի. որ արար զայնս՝ որք յապայն գալոց են. հարցէք զիս վա̃ որդւոցն իմոց՝ և դստերաց. և վասն գործոց ձեռաց իմոց պատուէ՞ր տուք ինձ: *12 Ես արարի զերկիր՝ և զմարդ ՚ի վերայ նր̃. ես ձեռամբ իմով հաստատեցի զերկինս. ես ամենայն աստեղաց ետու հրաման: *13 Ես յարուցի զնա արդարութե̃ թագաւոր. և ա̃մ ճանապարհք նր̃ ուղիղք են. նա շինեսցէ զքաղաքն իմ. և զգերութի̃ ժողովրդեան իմոյ դարձուսցէ. ո՛չ կաշառօք և ոչ պատարագօք ասէ Տր̃ զօրութե̃ց:

Հռօմ. 9.20. Երեմ. 18.6.

14 *Այսպէս ասէ Տր̃ զօրութե̃ց. վաստակ եգև երկիրն եգիպտացւոց՝ և վաճառականք եթէովպացւոց՝ և սաբայեցիքն. արք մեծամեծք առ քեզ անցցեն, և քեզ ծառայեսցեն. և զկնի քո շրջեսցին կապեալք ձեռակապօք. և առ քեզ եկեսցեն. և քեզ երկիր պագցեն՝ և ՚ի քեզ ուխտադիրք լիցին՝ զի ՚ի քեզ Ա̃ծ գոյ. և ասասցեն՝ թէ ոչ գոյ այլ Ա̃ծ բաց ՚ի քէն: *15 Դու ես Ա̃ծ՝ և մեք ոչ գիտէաք. Ա̃ծ Իղ̃ի փրկիչ: *16 Ամաչեսցեն՝ և յամօթ լիցին ա̃մ հակառակորդք նորա՝ և գնասցեն ամօթով ճարտարապետք մոլորութե̃ց: նորոգեցարո՛ւք առ իս կղզիք: *17 Զի Իէլ փրկեցաւ զփրկութի̃ն յաւիտենից. մի̃ ամաչեսցեն՝ և մի̃ ևս յամօթ լիցին մինչև յաւիտեանս: *18 Զի այսպէս ասէ Տր̃ որ արար զերկինս. սա է Ա̃ծ որ հաստատեաց զերկիր՝ և արար զնա. սա է՝ որ սահմանեաց զնա. և ոչ ՚ի զուր ինչ արար զնա, այլ ՚ի բնակութի̃ ստեղծ զնա: Ես եմ Տր̃ և չիք այլ ոք: *19 Ոչ ՚ի ծածուկ ինչ խօսեցայ՝ և ոչ ՚ի տեղւոջ խաւարին երկրի. չասացի ցզաւակն յակոբայ թէ ընդունայն խնդրեսջիք. Ես եմ. Ես եմ Տր̃. որ խօսիմ զարդարութի̃՝ և պատմեմ զճշմարտութի̃: *20 Ժողովեցարո՛ւք՝ և եկա՛յք՝ խորհեցարո՛ւք ՚ի միասին ապրեալքդ ՚ի հեթանոսաց. ոչ ծանեան՝ որք բարձեալ բերէին ըզփայտն դրօշեալ. և կան յաղօթս առ աստուածս՝ որք ոչ փրկեն զնոսա:

21 *Եթէ պատմիցեն՝ ա՛ղէ մերձեսցին, զի գիտասցեն ՚ի միասին. ո՛ լսելի արար զայս ա̃մ ՚ի սկզբանէ. և յայնմհետէ պատմեցաւ ձեզ. Ես եմ Ա̃ծ և չիք այլ ոք բաց յինէն արդար և փրկիչ՝ և չիք ոք բաց յինէն: *22 Դարձարո՛ւք առ իս՝ և ապրեսջիք՝ որք եկեալդ էք ՚ի ծագաց երկրի. Ես եմ Ա̃ծ՝ և չիք այլ ոք: *23 Յանձն իմ երդնում. թէ ոչ ինչ ելանէ ՚ի բերանոյ իմոյ՝ արդարութի̃է. և

բանք

Հռոմ. 14.11. Փիլիպ. 2.10.

քանզի իմ ոչ եղծցին։ *24 Զի ինձ կրկնեսցի ամենայն ծունր. և խոստովանլիցի ամ լեզու Տն։ *25 Եւ ասասցէ՝ թէ արդարութի և փառք՝ առ նա եկեսցեն. և ամաչեսցեն ամենեքեան՝ որք որոշեն զանձինս իւրեանց 'ի Տէ։ *26 Արդարասցին ասածով՝ և փառաւորեսցի ամ զաւակ որդւոցն իէի։

## Գլ: ԽԶ:

1 Անկաւ բէլ՝ խորտակեցաւ դագոն. Եղեն դրօշեալք նց 'ի գազանս՝ և յանասունս. բարձէք զնս կապեալս իբրև զբեռն աշխատեցելոյ՝ և քաղցեցելոյ։ *2 Նքելոյ և տկարացելոյ 'ի միասին. որք ոչ կարիցեն ապրիլ 'ի պատերազմէ. և նոքա 'ի գերութի վարեցան։ *3 Լուարուք ինձ տունդ յակոբայ. և ամ մնացեալքդ իէի. ընտրեալքդ յորովայնէ՝ և խրատեալքդ 'ի մանկութէ։ *4 Մինչև ցծերութի թէ ես եմ. և մինչև կարի իսկ ծերասջիք սակայն ես եմ. ես համբերեմ ձեզ. ես արարի. և ես անսացից. ես ընկալայց՝ և ապրեցուցից զձեզ։ *5 Ում նմանեցուցիք զիս. տեսէք՝ հնարեցարուք մոլորեալքդ։ *6 Որք արկանէք ոսկի հանդամանակ 'ի քսակէ. և կշռէք զարծաթ 'ի կշիռս. և 'ի վարձու ունիք զոսկերիչս գործել կուռս ձեռագործս. և խոնարհեալ երկիրպագանէք նոցա։ *7 Բարձեալ բերէք 'ի վր ուսոց. և եթէ դնիցէք 'ի գետնի, անդէն 'ի տեղւոջ մնան՝ և ոչ շարժեսցին։ և եթէ ոք կարդասցէ առ նա ոչ լսէ. և 'ի չարեաց ոչ փրկեսցէ զնա։ *8 Յիշեցէք զայս՝ և յոգւոց հանէք. ապաշաւեցէք մոլորեալքդ. դարձարուք սրտիւք։ *9 Եւ յիշեցէք զառաջինն գործսն յաւիտենից. զի ես եմ, և չիք այլոք բաց յինէն։ *10 Որ պատմեցի յառաջագոյն զվերջինսն՝ մինչչև եղեալ իցեն. և միանգամայն կատարեսցին. և ասացի թէ ամ խորհուրդք իմ հաստատեսցին. և ամ զոր կամիմ արարից։ *11 Կոչել յարևելից թռչունս, և յերկրէ հեռաստանէ, վս որոց խորհեցայն. խօսեցայ՝ և ածի՝ հաստատեցի՝ և արարի. ածի զնա՝ և յաջողեցի զճանապարհս նորա։ *12 Լուարուք ինձ կորուսեալքդ սրտիւք՝ հեռացեալքդ յարդարութէ։ *13 Մերձեցուցի զարդարութի իմ. և այլ ոչ հեռացի. և զճշմարտութի և զփրկութի իմ ոչ յամեցուցից. ետու 'ի սիոն զփրկութի, իսրայէլի 'ի փառաւորութի։

Բարուք 6.25.

## Գլ: ԽԷ:

1 Իջ՝ նիստ յերկրի օրիորդ դուստր բաբիլացւոց։ նիստ 'ի գետնի. զի չիք աթոռ։ մուտ 'ի խաւար դուստր քաղդեացւոց. ոչևս յաւելցիս կոչել գիրգ և փափուկ։ *2 Առ զերկանս. աղա ալիւր. ընկեա զքօղ քո։ քարշեա զալիս քո։ բաց զսրունս քո, անց ընդ գետս։ *3 Յայտնեսցի ամօթ քո. և երևեսցին նախատինք քո. զի բարձից 'ի քէն զիրաւունս քո. ոչևս մատնեսցէ զքեզ մարդկան։ *4 Որ փրկեացն զքեզ. Տր զօրութ անուն է նորա՝ սրբն իէի։ *5 Նիստ թախծեալ՝ զղջացեալ. մուտ 'ի խաւար դուստր քաղդեացւոց։ ոչ ևս կոչեսցիս զօրութի թագաւորաց։ *6 Ես բարկացեալ էի 'ի վերայ ժողովրդեան իմոյ՝ զի պղծեցին զժառանգութի իմ։ ես մատնեցի զնս 'ի ձեռս քո. և դու ոչ արարեր 'ի վր նց զողորմութի։ ծանրացուցեր զլուծ ծերոցյոյժ։ *7 Եւ ասացեր՝ յաւիտեան կացից իշխան. ոչ երբեք եդեր զայս 'ի սրտի քում. և ոչ յիշեցեր զվախճան։ *8 Եւ արդ լուր զայս փափուկդ՝ որ նստէիր յանձնապաստան. և ասէիր 'ի սրտի քում. Ես եմ, և չիք ոք իմ ընկեր։ ոչ նստայց յայրութե. և ոչ ծանեայց զանորդութի։ *9 Եւ արդ հասցեն յանկարծակի 'ի վր քո երկոքեան սոքա 'ի միում աւուր. այրութի, և անզաւակութի եկեսցէ յանկարծակի 'ի վր քո՝ վասն դիւթութեց քոց. և վս զօրացեալ կախարդութեց քոց։ *10 Եւ վս վստահութեց չարութեց քոց։ զի ասէիր՝ ես եմ. և չիք այլոք իմ ընկեր։ զայս գիտասջիր. զի առնուցուս զայս 'ի միտ. և պոռնկութիւն քո յամօթ լինիցի քեզ. և ասացեր 'ի սրտի քում, ես եմ. և չիք ոք իմ ընկեր։ *11 Եւ հասցէ 'ի վր քո կորուստ՝ զոր ոչ գիտիցես. և խորխորատ՝ և անկցիս 'ի նա. և եկեսցէ 'ի վր քո թշուառութի. և ոչ կարասցես սր լինել։ եկեսցէ 'ի վր քո յանկարծակի կորուստ. և ոչ ծանիցես։ *12 Ա'ղէ՝ կաց դու այժմ 'ի դիւթութիւնս քո. և 'ի բազում կախարդութիւնս քո՝ զորս ուսար 'ի մանկութէ քումմէ. 13 թէ կարասցես ինչ օգտիլ։ *Եթէ կարասցես կազդուրել. զի աշխատեցար 'ի խորհուրդս քո. յարիցեն՝ և ապրեցուսցեն զքեզ աստեղագէտքն՝ որք նշմարեն զաստեղս երկնից. պատմեսցեն 14 քեզ՝ զինչ գալոց է 'ի վր քո։ *Ահաւադիկ ամենեքեան իբրև զխռիճ 'ի հուր այրեսցին. և մի ապրեցուսցեն զանձինս իւրեանց 'ի բոցոյ անտի. զի նստիս 'ի վր կայծականց հրոյ. նոքա եղիցին

Նաւում 3. 5.

Յայտն. 18.7.

Սայր. 51. 19.

քեզ յօգնականութի: *Սատակք եղեն վաճառականք քո 'ի վաճառս քո 'ի մանկութէ իւրեանց. այր ըստ առնէ մոլորեցան. և քեզ ոչ եղիցի փրկութի: 15

## ԳԼ: ԽԸ:

1 Լուարուք զայս տունդ յակոբայ՝ անուանեալքդ յանուն իէլի. ծնեալքդ 'ի զաւակէ յուդայ. որք երդնուք յանուն Տն Այ իէլի. որք յիշատակէքդ ոչ ճշմարտութբ՝ և ոչ արդարութբ: 2 *Որք խորախուսէք յանուն քաղաքին սրբոյ՝ և հաստատեալ համարիք յանուն Այ իէլի. Տր զօրութեանց անուն է նր: 3 *Զառաջինսն տակաւին պատմեմ. ել 'ի բերանոյ իմոյ՝ և լսելի եղև. յանկարծակի արարի՝ և եկն եհաս: 4 *Գիտեմ՝ զի խիստ ես. և ջիլք երկաթիք պարանոց քո. և ճակատ քո պղնձի: 5 *Պատմեցաւ քեզ առաջինն. և մինչչև հասեալ էր առ քեզ. լսելի արարի քեզ. մի երբեք ասիցես թէ կուռքն իմ արարին. և մի ասիցես թէ դրօշեալքն՝ և ձուլածոյքն պատմեցին ինձ: 6 *Լուայք զամ՝ և ոչ առիք 'ի միտ. այլ և լսելի արարի քեզ զնորն՝ որ յայսմ հետէ լինելոց է: 7 *Եւ ոչ ասացեր՝ թէ այժմ լինի. և ոչ 'ի վաղուց հետէ՝ յաւուրցն առաջնոց. և ոչ եղեր ունկն դիր այնմիկ: մի ասիցես. թէ այո, գիտեմ զայդ: 8 *Ոչ ոչ գիտես՝ և ոչ իմանաս. և ոչ 'ի սկզբանէ բացեր զականջս քո. զի գիտացի՝ թէ արհամարհելով արհամարհեսցես: և անօրէն անդստին յորովայնէ կոչեսցիս: 9 *Վս անուան իմոյ ցուցից քեզ զբարկութի իմ, և զփառաւորութիւս իմ, զոր ածից 'ի վր քո. զի մի սատակեցից զքեզ: 10 *Ահաւադիկ վաճառեցի զքեզ ոչ արծաթոյ. և զերծուցի զքեզ 'ի հնոցէ աղքատութե: 11 *Վասն իմ արարից քեզ զայդ. զի մի անուն իմ հայհոյեսցի. ‖ և զփառս իմ այլում ոչ տաց: 12 *Լուր ինձ յակոբ. և իէլ զոր ես կոչեմ. ‖ ես եմ առաջինն՝ և ես եմ յաւիտեանս: 13 *Ձեռն իմ էարկ հիմունս երկրի. և աջ իմ հաստատեաց զերկինս. կոչեցից զամենեսեան զնոսա. և կացցեն 'ի միասին: 14 *Ժողովեսցին ամենեքեան և լուիցեն՝ թէ ո պատմեաց նց զայն: առ սէր քո արարի զկամս քո 'ի վր բաբելոնի, բառնալ զզաւակն քաղդեացւոց: 15 *Ես խօսեցայ՝ և ես կոչեցի. ածի զնա՝ և յաջողեցի զճանապարհս նր: 16 *Մատերուք առ իս՝ և լուարուք զայս: ոչ 'ի սկզբանէ 'ի ծածուկ ինչ խօսեցայ. և ոչ 'ի տեղւոջ խաւարին երկրի. յորժամ լինէրն իսկ՝ ես անդ էի. և

(‖ Եսայ. 42.8. ‖ Եսայ. 41.4. և 44.6.)

արդ Տր Տր առաքեաց զիս, և հոգի նր: 17 *Այսպէս ասէ Տր՝ որ փրկեացն զքեզ՝ սբն իէլի. ես եմ Տր Ած քո՝ ցուցի քեզ գտանել զճանապարհ, ընդ որ գնայցես: 18 *Եւ եթէ լուեալ էր քո պատուիրանաց իմոց. լինէր քեզ իբրև գետ խաղաղութի քո. և արդարութի քո իբրև զալիս ծովու: 19 *Եւ լինէր իբրև զաւազ զաւակ քո և ծնունդք որովայնի քոյ իբրև զհող երկրի. սակայն և արդ ոչ սատակեսցիս. և ոչ կորիցէ անուն քո առաջի իմ: 20 *‖ Ելէք 'ի բաբելոնէ. փախերուք 'ի քաղդեացւոց. ձայն ուրախութե պատմեցէք. և լսելի եղիցի. պատմեցէք մինչև 'ի ծագս երկրի՝ զոր ասէքդ՝ եթէ փրկեաց Տր զծառայ իւր զյակոբ: 21 *‖ Եւ եթէ ծարաւեսցին յանապատին. հանցէ նց ջուր 'ի վիմէ. վէմ պատառեսցի. ջուրք բղխեսցին. և արբցէ ժողովուրդն իմ: ‖ ոչ գոյ ուրախութի ամպարշտաց, ասէ Տր:

(‖ Եսայ. 51.6. ‖ Ելից 17.6. Թուոց 20.11. ‖ Եսայ. 57.21.)

## ԳԼ: ԽԹ:

1 Լուարուք ինձ կղզիք, և ունկն դիք հեթանոսք: յետ բազում ժամանակաց հաստատեսցի այդ ասէ: յարգանդէ կոչեաց զիս. և յորովայնէ մօր իմոյ կարդաց զանուն իմ: 2 *‖ Եդ զբերան իմ իբրև զսուսեր սուր. և ընդ հովանեաւ ձեռին իւրոյ թաքոյց զիս. եդ զիս իբրև զնետ մի ընտիր, 'ի կապարճս իւր թաքոյց զիս: 3 *Եւ ասէ ցիս. ծառայ իմ ես դու իէլ. և 'ի քեզ փառաւորեցայց: 4 *Եւ ասեմ, զուր ուրեմն վաստակէի տարապարտուց. յոչինչ ետու զզօրութի իմ: վն այսորիկ իրաւունք իմ 'ի Տէ. և վաստակք իմ առաջի այ իմոյ: 5 *Եւ արդ այսպէս ասէ Տէր. որ ստեղծ զիս յորովայնէ ծառայ իւր. ժողովել զյակոբ և զիէլ առ ինքն. ժողովեցայց, և փառաւորեցայց առաջի Տն. և Ած իմ է ինձ զօրութի: 6 *Եւ ասէ ցիս. մեծ է քեզ այդ. կոչիլդ քեզ ծառայ իմ: հաստատել զազգն յակոբու՝ և զցրուեալսն իէլի դարձուցանել. ‖ ահաւադիկ եդի զքեզ յուխտ ազգի. և 'ի լոյս հեթանոսաց. լինիլ փրկութի 7 մինչև 'ի ծագս երկրի: *Այսպէս ասէ Տր. որ փրկեացն զքեզ Ած իէլի. սրբեցէք զայն՝ որ խոտէն զանձն իւր. զարհուրեալն յազգաց 'ի ծառայիցն իշխանաց: թագաւորք տեսցեն զնա՝ և յոտն կացցեն. իշխանք երկիրպագցեն նմա վն Տն. զի հաւատարիմ է սբն իէլի՝ որ ընտրեաց զքեզ: 8 *‖ Այսպէս ասէ ցիէլ Տր, 'ի ժամանակի ընդունելութե լուայ քեզ. և յաւուր փրկութե ստեղծի զքեզ՝ և օգնեցի քեզ. և ետու

զքեզ

(ասէ Տր. ‖ Եսայ. 51.16. ‖ Եսայ. 42.6. Գործ. 13.47. ‖ Բ. Կորն. 6.2.)

զքեզ յուխտ հեթանոսաց հաստատել զերկիր . և ժառանգեցուցանել զժառանգութիս աւերակս ։ 9 *Ասել կապելոց՝ թէ ելէք . և որք՚ի խաւարին իցեն՝ թէ յայտնեցարուք . յամ ճանապարհս արածեսցին . և յամ շաւիղս ճարակք նց ։ 10 *Մի քաղցիցին՝ և ոչ ծարաւեսցին՝ և ոչ խորշակահար լիցին յարեւու . այլ որ ողորմելոցն է՝ մխիթարեսցէ զնս և ընդ աղբերականս ածցէ զնս։ [Յայտ. 7.16.] 11 *Եւ եդից զամ լերինս ՚ի ճանապարհս . և զամ շաւիղս յարօտս նոցին։ 12 *Ահաւասիկ ոմանք եկեսցեն ՚ի հեռաստանէ . ոմանք ՚ի հիւսիսոյ և ՚ի ծովէ . և ոմանք յերկրէ պարսից ։ 13 *Ուրախ լերուք երկինք՝ և ցնծասցէ երկիր . գոչեսցեն լերինք զցնծութի . և բլուրք զարդարութի ։ զի ողորմեցաւ Տր ժողովրդեան իւրում . և զխոնարհս ժողովրդեան իւրոյ մխիթարեաց։ 14 *Բայց սիօն ասաց . եթող զիս Տր . և մոռացաւ զիս Ած ։ 15 * Միթէ մոռանայցէ՞ կին զմանուկ իւր . կամ ո՞չ գթասցի ՚ի ծնունդս որովայնի իւրոյ ։ և եթէ մոռանայցէ զայս կին . սակայն ես ո՛չ մոռացայց զքեզ ասէ Տր ։ 16 *Ահաւասիկ ՚ի վր ձեռաց իմոց նկարեցի զպարիսպս քո . և առաջի իմ ես դու յամ ժամ ։ 17 *Եւ արագ շինեսջիր յայնցանէ՝ որք քակեցինն զքեզ . և որք աւերեցին զքեզ՝ ՚ի քէն ՚ի բաց մերժեսցին։ 18 *Ամբարձ շուրջ զքև զաչս քո՝ և տես զամենեսին . զի ահաւադիկ ժողովեցան՝ և եկին առ քեզ ։ կենդանի եմ ես՝ ասէ Տր . զի զամենեսին զնոսա իբրև զպատմուճան զգեցցիս . և արկցես զնս զքև իբրև զզարդ հարսին։ [Եսայ. 60. 4.] 19 *Զի աւերակքն՝ և ապականեալքն՝ և կործանեալքն քո՝ արդ նեղեսցին ՚ի բնակչաց իւրեանց ։ և հեռասցին ՚ի քէն՝ որք կլանէին զքեզ ։ 20 *Զի ասասցեն յականջս քո որդիքն քո՝ զոր կորուսեր . նեղ է մեզ տեղիս , ընդարձակեա մեզ՝ զի բնակիցուք ։ 21 *Եւ ասասցես ՚ի սրտի քում . ո՞ ծնաւ ինձ զսոսա ։ զի ես անզաւակ և այրի էի . պանդուխտ՝ և արգելական . և զսոսա ինձ ո՛ սնոյց . զի ես միայն մնացեալ էի . և սոքա ո՞ւր էին։ 22 *Այսպէս ասէ Տր Տէր՝ ահաւադիկ ամբարձից զձեռս իմ ՚ի վր ազգաց . և ՚ի կղզիս կանգնեցից զնշան իմ . և ածցեն զորդիս քո ՚ի ծոցս իւրեանց . և զդստերս քո ՚ի վր ուսոց իւրեանց բարձեալ բերիցեն ։ 23 *Եւ եղիցին թագաւորք դայեակք քո . և կանայք նոցա մանկակալք քո . ՚ի վր երեսաց երկրի երկիրպագանիցեն քեզ . և զհող ոտից քոց լիզեսցեն . և ծանիցես , եթէ ես եմ Տր . և ո՛չ ամաչեսցեն՝ որք սպասէին ինձ ։ 24 *Միթէ հանիցէ՞ ոք զկողոպուտ սկայի . կամ վարիցէ՞ ոք տարապարտուց զգերի՝ և ապրիցի ։ 25 *Այսպ ասէ Տր . եթէ ոք վարիցէ զհսկայ գերի . առցէ և զաւար նր . և քաջ ապրի՝ որ առնուցու զաւար հսկայի ։ այլ ես զդատաստան իմ դատեցայց . և զորդիս իմ փրկեցից ։ 26 *Եւ կերիցեն նեղիչք քո զմարմինս իւրեանց . և արբցեն իբրև զգինի նոր զարիւնս իւրեանց՝ և արբեսցին . և ծանիցէ ամ մարմին՝ թէ ես եմ Տէր՝ որ փրկեցի զքեզ . և օգնեցի՝ և զօրացուցի զյակոբ։

## ԳԼ. Ծ.

1 Այսպէս ասէ Տր՝ ո՞ւր է թուղթն ապահարզանի . որով արձակեցի զմայրն ձեր ։ կամ ո՞ւր է գրաւական վաճառականացն՝ որով վաճառեցի զձեզ ։ այլ ՚ի մեղս ձեր վաճառեցայք . և վս անօրէնութեց ձերոց արձակեցի զմայրն ձեր ։ 2 * Զի եկի՝ և ո՛չ գոյր մարդ . կոչեցի՝ և ոչ՞ոք էր՝ որ լսէր . Մի թէ ո՞չ կարէ փրկել ձեռն իմ . կամ ո՞չ զօրեմ ապրեցուցանել . ահա կշտամբու՟ք իմով աւերեցից զծով . և զգետս ապականեցից . և ցամաքեսցին ձկունք նց ՚ի ջուրցն պակասութե՟ . և մեռցին ՚ի ծարաւոյ ։ [Եսայ. 59. 1.] 3 * Զգեցուցից զերկինս խաւարաւ . և իբրև զքուրձ արարից զհանդերձ նր ։ 4 * Տր Տր տայ ինձ լեզու խրատու . զի գիտացից խօսել ՚ի ժամու զբանն ։ պատրաստեաց զիս ընդ առաւօտս . յաւել ինձ ունկն ՚ի լսել ։ 5 * Եւ խրատ Տն բանայ զականջս իմ . և ես ոչ խոտանամ . և ո՛չ ընդդէմ դառնամ։ 6 * Զթիկունս իմ ետու ՚ի հարուածս . զծնօտս իմ յապտակս . և զերեսս իմ ո՛չ դարձուցի յամօթոյ ընդ երեսս թքանելոյ ։ [Մատ. 26. 67.] 7 * Եւ Տր Տր եղև իմ օգնական . վասն այսորիկ ոչ ամաչեցի . այլ արարի զդէմս իմ իբրև զվէմ հաստատուն . և գիտացի՝ թէ ոչ ամաչեցից ։ 8 * Զի մերձ է՝ որ արդարացուցանէն զիս ։ ո՞վ է՝ ոսոխն իմ , եկեսցէ՝ կացցէ ՚ի մէջ . և ո՞վ է՝ որ դատէն զիս՝ մերձեսցի առ իս ։ [Հռովմ. 8. 33.] 9 * Զի ահաւասիկ Տր Տէր օգնական է ինձ . ո՞վ է՝ որ չարչարիցէ՝ զիս ։ ահաւադիկ դուք ամենեքին իբրև զձորձս հնասջիք . և ցեց մեցամէս կերիցէ զձեզ ։ [դատապարտեսցէ] 10 * Ով իցէ ՚ի ձէնջ՝ որ երկնչիցի ՚ի Տէ . լուիցէ զձայն ծառայի նր . որք գնային ընդ խաւար՝ և ո՛չ գոյր նց լոյս . յուսացեալք յանուն Տն և խրախուսեալք Ած ։ 11 * Ահաւադիկ դուք ամենեքեան իբրև հուրբ վառեալ պատրաստիջիք իբրև ՚ի բոցս . գնա_

ջիք 'ի լոյս հրոյ ձերոյ. և բոռբոքիջիք բոցով: վասն իմ եղև ձեզ այդ. 'ի տրտմութեն ննջեսջիք:

## ԳԼ: ԾԱ.

1 Լուարո՛ւք ինձ, որք զհետ երթայք իրաւանց՝ և խնդրէք զՏր. նայեցարո՛ւք 'ի վէմն հաստատուն՝ յորմէ կոփեցայք. և 'ի գուբ հորոյն յորմէ փորեցայք: 2 *Նայեցարո՛ւք յաբրահամ հայրն ձեր՝ և 'ի սառրայ, որ երկնեացն զձեզ. զի մի էր՝ և կոչեցի զնա. և օրհնեցի զնա. և սիրեցի զնա. և բազմացուցի զնա: 3 *Եւ արդ մխիթարեցից զքեզ սիօն. և մխիթարեցից զա՛մ զաւերակս նր. և արարից զա՛մ աւերակս նր իբրև զդրախտ: և զկողմն արևմտից իբրև զդրախտ Տն. ուրախութի և ցնծութի գտցին 'ի նմա. խոստովանութի և ձայն օրհնութե: 4 *Լուարո՛ւք ինձ. լուարո՛ւք ինձ թագաւորք՝ և ունկնդիր լերո՛ւք ինձ. զի օրէնք յինէն ելցեն. և դատաստան իմ 'ի լոյս հեթանոսաց:

Ժողովուրդք և Թագաւորք

5 *Մերձ արագ մերձեսցի արդարութի իմ. և ելցէ իբրև զլոյս փրկութի իմ. 'ի բազուկ իմ հեթանոսք յուսասցին. ինձ կղզիք սպասեալ մնան. և 'ի բազուկ իմ յուսասցին: 6 *Ամբարձէ՛ք յերկինս զաչս ձեր. և հայեցարո՛ւք յերկիր 'ի խոնարհ. զի երկինք իբրև զծուխ հաստատեալ են. և երկիր իբրև զձորձս մաշեսցի. և բնակիչք նր իբրև զնոյն կորիցեն: ‖ Այլ փրկութի իմ յաւիտեան կացցէ. և արդարութի իմ մի պակասեսցի:

‖ Սաղմ. 36. 39.

7 *Լուարո՛ւք ինձ՝ որք գիտէք զիրաւունս. ժողովուրդ իմ, որոյ օրէնք իմ 'ի սիրտս ձեր: մի երկնչիք 'ի նախատանաց մարդկան. և բամբասանք նց զձեզ մի պարտեսցեն: 8 *Զի իբրև ձորձք ընդ ժամանակաւ մաշեսցին. և իբրև զասր որ ուտիցի 'ի ցեցոյ: բայց արդարութի իմ յաւիտեան կացցէ. և փրկութի իմ յազգս յազգս: 9 *Զարթի՛ր, զարթի՛ր երմ. և զգեցի՛ր զզօրութի բազկի քո. զարթի՛ր իբրև յաւուրցն 'ի սկզբանէ՝ իբրև յազգացն յաւիտենից: ո՞չ դու այն ես՝ որ տաշեցեր զլայնութի՛ն, վանեցեր զվիշապն:

10 *‖ Ոչ դու այն ես՝ որ աւերեցեր զծովն զբազմութի ջուրցն անդնդոց. որ արարեր զխորս ծովու ճանապարհ անցից փրկելոցն և ապրելոց: 11 *Զի 'ի Տէ եղիցի դարձ. և եկեսցեն 'ի սիօն ցնծութբ և ուրախութբ յաւիտենից. զի 'ի վերայ գլխոց նոցա օրհնութի. և ուրախութի հասցէ նց. մերժեցան ցաւք և տրտմութիք և հեծութիք: 12 *Ե՛ս եմ, ե՛ս եմ նոյն՝ որ մխիթարեցի զքեզ. ծանի՛ր՝ զինչ ոք էիր. և երկեար 'ի մահկանացու մարդոյ: և յորդւոյ մարդոյ՝ որ իբրև զխոտ ցամաքեցաւ: 13 *Եւ մոռացար զՏր Ած զարարիչ քո. որ արար զերկինս. և հաստատեաց զերկիր: և երկնչէիր միշտ զա՛մ աւուրս, յերեսաց սրտմտութե նեղչին քոյ՝ ո՞ր խորհեցաւ ջնջել զքեզ: և արդ ո՞ւր է սրտմտութի նեղչին քոյ: 14 *Զի 'ի փրկութենէ քում ո՛չ կարասցէ կալ. և ոչ յամեսցի. և ոչ սպանցէ զքեզ յապականութի. և ո՛չ պակասեսցի հացն քո: 15 *Զի ես եմ Տր Ած քո՝ որ խռովեմ զծով. և գոչեցուցանեմ զալիս նորա. Տր սաբաւօթ անուն է իմ: 16 *‖ Եդից զբանս իմ 'ի բերան քո. և ընդ հովանեաւ ձեռին իմոյ ծածկեցից զքեզ. որով կանգնեցի զերկինս. և արկի հիմունս երկրի. և ասացի ցսիօն՝ ժողովուրդ իմ ես դու:

‖ Ելից. 14. 21.

‖ Վեր. 49. 2.

17 *Զարթի՛ր, զարթի՛ր. և արի՛ կա՛ց երմ. որ արբեր 'ի ձեռանէ Տն զբաժակ բարկութե նորա. զբաժակն կործանման՝ զբաժակն սրտմտութե. զոր արբեր՝ և թափեցեր: 18 *Եւ ոչո՛ք էր՝ որ մխիթարէր զքեզ յա՛մ որդւոցն քոց՝ զորս ծնար: և ոչո՛ք էր՝ որ ձեռնտու լինէր քեզ յա՛մ որդւոցն քոց՝ զորս բարձրացուցեր: 19 *‖ Երկու ինչ հակառակ կան քեզ. ո՞վ է, որ տրտմակից լինիցի քեզ: կործանումն, և բեկումն. սով և սուր: 20 և ո՞ մխիթարեսցէ զքեզ: *Որդիքն քո տարակուսեալք՝ որք ննջեն 'ի կիցս ա՛մ ճանապարհաց. իբրև զճակնդեղ կիսեփեաց. լիք են 'ի բարկութէ Տն, լուծեալք 'ի Տէ Այ: 21 *Վս այսորիկ լո՛ւր այժմ տառապեալդ՝ որ արբեալդ ես՝ և ոչ 'ի գինւոյ: 22 *Այսպէս ասէ Տր Ած որ դատէ զժողովուրդ իւր. ահաւադիկ 'ի բաց առարի 'ի ձեռանէ քումմէ զբաժակն կործանման՝ զբաժակն սրտմտութե իմոյ. և ո՛չ ևս յաւելցիս ըմպել զնա: 23 *Եւ տաց զնա 'ի ձեռս վնասակարացն քոց. և 'ի ձեռս այնոցիկ որք տառապեցուցինն զքեզ: որք ասէին ցանձն քո՝ խոնարհեա՛ց, թո՛ղ անցցուք. և եդիր հաւասար երկրի զմէջ քո արտաքոյ անցաւորաց:

‖ Վեր. 47. 9.

## ԳԼ: ԾԲ.

1 Զարթի՛ր՝ զարթի՛ր սիօն. և զգեցի՛ր զզօրութի քո սիօն. և դու զգեցի՛ր զփառս քո երմ քաղաքդ սրբոյն: զի ո՛չ ևս յաւելցին անցանել ընդ քեզ պղծք՝ և անթլփատք: 2 *Թօթափեա՛ զփոշիդ. յո՛տն կաց՝ և նի՛ստ երմ: լո՛յծ զկապ պարանոցի քոյ գերի դուստր սիօնի: 3 *Զի այսպէս ասէ Տր. ձրի վաճառեցայք՝ և ո՛չ արծաթով փր-

փրկեսջիք։ 4 *Այսպէս ասէ Տր. Յերկիրն Եգիպտացւոց էջ ժողովուրդ իմ զառաջինն՝ բնակել պանդխտութբ. և յասորեստան բռնութբ վարեցան։ 5 *Եւ արդ՝ ընդէ՞ր էք աստ. այսպէս ասէ Տր. զի վարեցաւ ժողովուրդ իմ ձրի. զարմացեալ էին, և լային։ այսպէս ասէ Տր. վասն ձեր անուն իմ հայհոյի հանապազ 'ի մէջ հեթանոսաց։ 6 *Վասն այնորիկ ծանիցէ ժողովուրդ իմ զանուն իմ յաւուր յայնմիկ. թէ ես եմ նոյն՝ որ խօսէի, և արդ եկի՝ հասի։ 7 *Իբրև զի գեղեցիկ են 'ի վր լերանց ոտք աւետարանչի համբաւոյն խաղաղութե. իբրև աւետարանչի բարութեց. զի լսելի արարից զփրկութի քո. ասել ցսիոն թէ թագաւորեսցէ քեզ ԱԾ։ 8 *Զի ձայն պահապանաց քոց բարձրացաւ. և 'ի նոյն բարբառ առ հասարակ ցնծասցեն. զի դէմ յանդիման տեսցեն զժամանակն՝ յորում ողորմեսցի Տր սիոնի։ 9 *Երինք գոչեսցեն աւերակօքն համդերձ երէմի զփրկութի։ զի ողորմեցաւ նմա Տր. և փրկեաց զերէմ։ 10 *Եւ յայտնի արասցէ Տր զբազուկ իւր սրբ առաջի ամ ազգաց։ և տեսցեն ամ ծագք երկրի զփրկութի Այ մերոյ։ 11 *'Ի բաց կացէք, 'ի բաց կացէք, ելէք այտի. և 'ի պիղծս մի մերձենայք. ելէք 'ի միջոյ նր. մեկնեցարուք՝ որք բարձեալ բերէք զսպաս Տն։ 12 *Զի ոչ խռովութբ ելջիք. և ոչ փախստեամբ գնայցէք. զի առաջի ձեր Տր ինքնին գնասցէ. և որ ժողովէն զձեզ ԱԾ իլի։ 13 *Ահաւադիկ 'ի միտ առցէ մանուկ իմ. վերասցի և բարձրասցի և փառաւորեսցի յոյժ։ 14 *Զոր օրինակ զարմասցին բազումք 'ի վր քո. այնպէս անշքեսցի տեսիլ քո 'ի մարդկանէ. և փառք քո յորդւոց մարդկանէ։ 15 *Այնպէս զարմասցին ազգք բազումք 'ի վր քո. և կարկեսցեն թագաւորք զբերանս իւրեանց։ զի որոց ոչ պատմեցաւ վն նր՝ տեսցեն. և որոց ոչ իցէ լուեալ, 'ի միտ առցեն։

## Գլ: ԾԳ:

1 Տր ո՞ հաւատաց լրոյ մերում. և բազուկ Տն ո՞ւմ յայտնեցաւ։ 2 *Պատմեցաք առաջի նորա իբրև զմանուկ՝ իբրև զարմատ 'ի ծարաւուտ երկրէ. ոչ գոյր նորա տեսիլ՝ և ոչ փառք՝ տեսաք մեք զնա՝ և ոչ գոյր նր տեսիլ՝ և ոչ գեղեցկութի։ 3 *Այլ տեսիլ նր անարգ՝ նուաղեալ քան զամ որդւոց մարդկան. այր մի 'ի հարուածս՝ և գիտէ համբերել ցաւոց։ զի դարձուցեալ զերեսս անարգեցաւ՝ և յոչինչ համարեցաւ։ 4 *Նա զմեղս մեր բառնայ՝ և վն մեր չարչարի. և մեք համարեցաք զնա 'ի ցաւս՝ և 'ի հարուածս՝ և 'ի չարչարանս իբրև յԱյ։ 5 *Բայց նա վիրաւորեցաւ վն մեղաց մերոց. և ստաժեցաւ վասն մերոյ անօրէնութեց. խրատ խաղաղութե մերոյ 'ի նմա. և նր վիրօքն բժշկեցաք։ 6 *Ամենեքին իբրև ոչխարք մոլորեալք՝ այր 'ի ճանապարհի իւրում մոլորեցաւ. և Տր մատնեաց զնա առ մեղս մեր։ 7 *Եւ նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր. իբրև զոչխար 'ի սպանդ վարեցաւ. և իբրև որոջ առաջի կտրչի անմռունչ կայ. այնպէս 8 ոչ բանայ զբերան իւր։ *Առ խոնարհութե նր դատաստան նորա բարձաւ. և զազգատոհմ նորա ո՞ պատմեսցէ. զի բառնին յերկրէ կեանք նր. յանօրէնութեց ժողովրդեան իմոյ 'ի մահ վա- 9 րեցաւ։ *Եւ տաց զչարս փոխանակ գերեզմանի նր. և զմեծամեծս փոխանակ մահու նր. զի անօրէնութի ինչ ոչ գործեաց. և ոչ գտաւ նենգութի 'ի 10 բերան նր։ *Եւ Տր կամի սրբել զնա 'ի վիրաց անտի. եթէ տայցէք զվն մեղաց, անձինք ձեր տեսցեն զզաւակ երկայնակեաց. և կամի Տր 'ի ձեռն նորա 11 բառնալ 'ի ցաւոց անձին նր։ *Ցուցանել նմա լոյս՝ և ստեղծուլ իմաստութբ. արդարացուցանել զարդարն՝ որ մտադիւրն ծառայեաց բազմաց. և զմեղս 12 նոցա նա վերացուսցէ։ *Վն այսորիկ նա ժառանգեսցէ զբազումս. և զաւար հզօրաց բաշխեսցէ. փոխանակ զի 'ի մահ մատնեցաւ անձն նորա։ և ընդ անօրէնս համարեցաւ. և նա զմեղս բազմաց վերացոյց՝ և վասն անօրէնութեց նոցա մատնեցաւ։

## Գլ: ԾԴ:

1 Ուրախ լեր ամուլ. որ ոչ ծնանէիր. գոչեա՛ և աղաղակեա՛ որ ոչդ երկնէիր. զի բազումք են որդիք ակրնդկիդ՝ առաւել քան զարամբւոյն։ քան 2 զի ասաց Տր։ *Ընդարձակեա՛ զտեղի խորանի քոյ և զսրահից քոց. կանգնեա՛. և մի՛ անխայեր. երկայնեա՛ զապարանս դակս քո. հաստատեա՛ զցիցս քո։ 3 *Յաջ և յահեակ թաւալեա՛. և զաւակ քո զհեթանոսս ժառանգեսցէ. և զքա- 4 ղաքս աւերեալս շինեսցես։ *Մի՛ երկնչիցես, զի յամօթ արարին զքեզ. մի՛ պատկառեսցիս, զի նախատեցին զքեզ. զի զամօթն յաւիտենից մոռասցիս. և նախատինք այրութե քոյ ոչևս յուշ լի- 5 ցին քեզ։ *Զի Տր է, որ առնէ քեզ զայդ. Տր սաբաւօթ անուն նր. և որ փրկեաց զքեզ նոյն ԱԾ իլի ամ երկրի կո-

Ծննդ. 46. 6. — Հռոմ. 2. 24. — Եզեկ. 36. 20. — Հռոմ. 10. 15. — Նաւում 1. 15. — Սաղմ. 97. 3. — 2. Կորն. 6. 17. — Հռոմ. 15. 21. — Յովհ. 12. 38. — Հռոմ. 10. 16. — Մարկ. 9. 11.

Մատ. 8. 17. — 1. Կորն. 15. 3. — Մատ. 26. 63. — Գործ. 8. 32. — 1. Պետ. 2. 22. — 1. Յովհ. 3. 5. — Մար. 15. 28. — Ղուկ. 22. 37. — Ղուկ. 23. 29. — Գաղ. 4. 27. — Ղուկ. 1. 32.

կոչեսցի ։ *6 Ոչ եթէ իբրեւ զկին մի լքեալ տարակուսեալ կոչեաց զքեզ Տր. եւ ոչ իբրեւ զկին մի ատեցեալ ՚ի մանկութէ, այլ ասաց Աձ ։ *7 Առժամանակ մի թողի զքեզ. եւ ողորմութբ մեծաւ ողորմեցայց քեզ ։ *8 Առ փոքր մի սրտմտութն դարձուցի զերեսս իմ ՚ի քէն. եւ ողորմութբ յաւիտենից ողորմեցայց քեզ. ասաց՝ որ փրկեացն զքեզ ։ *9 Ի ջրոյն հեղեղէ առ Նոյիւ. այս է ինձ, որպէս երդուայն նմա ՚ի ժամանակին յայնմիկ չբարկանալ երկրի, նոյնպէս եւ ոչ քեզ ։ *10 Ոչ սպառնալեօք իմովք շարժել զլերինս, եւ փոփոխել զբլուրս. ոչ ողորմութի իմ պակասիցի ՚ի քէն. եւ ոչ ուխտ խաղաղութե քոյ անցանիցէ ։ ասաց Տր ։ *11 Հաշտեալեմ ը քեզ տառապեալդ եւ խախտեալդ, մինչեւ մխիթարեցից. ահաւադիկ պատրաստեալ եմ կարկեհան զքարինս քո. եւ զհիմունս քո շափիղայ ։ *12 Եւ կանգնեցից զաշտարակս քո յասպիս. եւ զդրունս քո յականց վանեայց՝ եւ ածից շուրջ զքեւ պարիսպ յընտիր ընտիր ականց պատուականաց ։ *13 Եւ զամ որդիս քո խրատեալս Այ. եւ ՚ի բազում խաղաղութե մանկունք քո ։ *14 Եւ արդարութբ շինեսջիր. ՚ի բաց լեր յանիրաւէ անտի. եւ ոչ երկիցես. եւ դողումն ՚ի քեզ ո՛չ մերձեսցի ։ *15 Զի ահաւադիկ եկք առ քեզ վասն իմ մերձեսցին. եւ առ քեզ ապաստան արասցեն ։ *16 Ահաւասիկ ես հաստատեցի զքեզ. ոչ որպէս դարբին մի որ փչովք կայծակունս արծարծանէ եւ յառաջբերէ անօթս ՚ի գործ. այլ ես հաստատեցի զքեզ՝ ոչ ՚ի կորուստ ապականութե ։ *17 Ամ անօթ վնասակար ՚ի քեզ ոչ յաջողեսցի. եւ զամ բարբառ՝ որ յարիցէ ՚ի վր քո ՚ի դատաստան, պարտեսցես. եւ ամ դատախազք քո ՚ի նմին. զի դոյ ժառանգութի պաշտօնէից Տն. եւ դուք եղիջիք ինձ իրաւացիք՝ ասէ Տր ։

Ծննդ. 9. 11. — Յովհ. 6. 45.

## Գլ. ԾԵ.

*1 Որք ծարաւիդ էք՝ երթայք ՚ի ջուր. եւ որք միանգամ ոչ ունիք զարծաթ երթայք՝ գնեցէք՝ եւ կերիջիք առանց արծաթոյ՝ եւ գնոց գնոյ ։ *2 Եւ զձարպ բնաւ ընդէ՞ր իսկ գնէք արծաթոյ՝ եւ ոչ հացի. եւ զվաստակսն ձեր ոչ յագուրդ. լուարո՛ւք ինձ՝ եւ կերիջիք զբարութի. եւ վայելեսցեն ՚ի բարութե անձինք ձեր ։ *3 Ունկնդի՛ր լերուք լսելեօք ձերովք՝ զհետերթայք ճանապարհաց իմոց. լուարո՛ւք ինձ՝ եւ կեցցեն ՚ի բարութե անձինք ձեր. եւ եդից ընդ ձեզ ուխտ յաւիտենական. զսրբութիւնս դաւթի զհաւատարիմ ։ *4 Ահաւադիկ ՚ի վկայութի հեթանոսաց ետու զնա. իշխան եւ հրամանատար ազգաց ։ *5 Ազգք որք ոչ գիտիցեն՝ կարդասցեն առ քեզ. եւ ժողովուրդք՝ որք զքեզ ոչ ճանաչէին՝ ապաստան արասցեն զքեզ. վասն Տն Այ քոյ սրբոյն Իէլի. զի փառաւոր արար զքեզ ։ *6 Խնդրեցէք զՏր եւ յորժամ գտանիցէք զնա՝ կարդացէք առ նա ։ եւ իբրեւ մերձեսցի առ ձեզ ։ *7 Թողցէ ամպարիշտ զճանապարհ իւր. եւ այր անօրէն զխորհուրդս իւր. եւ դարձցի առ Տր՝ եւ գտցէ զողորմութի. եւ առ Աձ մեր՝ զի բազմապատիկ թողցէ զանօրէնութիս ձեր ։ *8 Զի ոչ են խորհուրդք իմ իբրեւ զխորհուրդս ձեր. եւ ո՛չ ճանապարհք իմ իբրեւ զճանապարհս ձեր՝ ասէ Տր ։ *9 Այլ որպէս հեռի են երկինք յերկրէ. այնպէս հեռի են ճանապարհք իմ ՚ի ճանապարհաց ձերոց. եւ խորհուրդք իմ ՚ի խորհրդոց ձերոց ։ *10 Զոր օրինակ եթէ իջանիցէ անձրեւ կամ ձիւն յերկնից. եւ անդրէն ոչ դառնայ. մինչեւ արբուսցէ զերկիր՝ ծնցի, եւ բղխեսցէ. եւ տացէ զսերմ սերմանողի՝ եւ զհաց ՚ի կերակուր ։ *11 Այնպէս եղիցի բանն իմ, որ ելանէ ՚ի բերանոյ իմմէ. մի դարձցի դատարկ՝ մինչեւ կատարեսցէ, զորինչ կամիցիմ. եւ դիւրեցից զճանապարհս քո. եւ զճանապարհս իմ պահեսցես ։ *12 Զի ուրախութբ ելջիք. եւ ցնծութբ ուսանիջիք. զի լերինք եւ բլուրք կայտառեսցին ընդունել զձեզ ուրախութբ. եւ ամ ծառք անտառի ծափս հարցեն ոստովք իւրեանց ։ *13 Եւ փոխանակ ցրդոյն նոճ բուսցի. եւ փոխանակ դժնկին մուրտ ելցէ. եւ եղիցի Տն յանուն եւ ՚ի նշան յաւիտենից՝ եւ մի պակասեսցի ։

Սիրաք 51. 33. — Գործ. 13. 35. — Ճանապ. ցեն — 2. Կոր. 9. 10. — Եւ ցնծութբ երթիջիք.

## Գլ. ԾԶ.

*1 Այսպէս ասէ Տր. զդատս կացէք իրաւանց՝ եւ գործեցէք զարդարութի. զի եկեալ հասեալ է փրկութի իմ. եւ յայտնելոց է ողորմութի իմ ։ *2 Երանի առն՝ որ առնիցէ զայն. եւ մարդոյ՝ որ կացցէ ՚ի նմին. եւ պահիցէ զշաբաթս իմ՝ եւ ոչ պղծիցէ. եւ պահիցէ զձեռս իւր յառնելոյ զանիրաւութի ։ *3 Մի ասասցէ օտարազգին, որ եկեալ յեցեալ իցէ ՚ի Տէր. եթէ մերժելով մերժեսցէ զիս Տր ՚ի ժողովրդենէ իւրմէ. եւ մի ասասցէ ներքինին՝ թէ ես եմ փայտ չոր ։ *4 Այսպէս ասէ Տր ցներքինիս՝ որք պահիցեն զպահպանութիս իմ. եւ ընտրիցեն զոր կամիմ. եւ կալցեն յուխտին իմում ։ *5 Տաց նոցա ՚ի տան իմում. եւ ընդ պարսպաւ իմով տեղի անուա-

անուանի՝ առաւել քան զուստերաց և զդստերաց․ անուն յաւիտենական տաց նց՝ և մի պակասեսցի։ 6 *Եւ զայլ ազգիսն՝ որք եկեալ յեցեալ իցեն ՚ի Տր՝ ծառայել նմա՝ և սիրել զանուն Տր․ լինել նմա ՚ի ծառայս և յաղախնայս․ և զամենեսեան՝ որք պահիցեն զշաբաթս իմ, և ոչ պղծիցեն․ և կալցեն յուխտին իմում։ 7 *Տարայց զնոսա ՚ի լեառն սրբութե իմոյ․ և ուրախ արարից զնոսա ՚ի տան աղօթից իմոց․ ողջակէզք նոցա՝ և պատարագք նց ընդունելիք լիցին ՚ի վր սեղանոյ իմոյ։ ‖ Զի տուն իմ տուն աղօթից կոչեսցի ամ հեթանոսաց։ 8 *Ասէ Տր Տր՝ որ ժողովէ զցրուեալսն իղի․ թէ ժողովեցից ՚ի վր նր ժողովս ամ գազանաց անապատի։ 9 *Եկայք՝ կերայք ամ գազանք անտառի։ 10 *Տեսէք․ զի կուրացան ամենեքեան՝ և ոչ գիտեն զհանճար․ ամենեքին ոմ շունք համրացեալք՝ որք ոչ կարիցեն հաջել․ յերազանան յանկողինս․ սիրեն զնիրհել։ 11 *Իբրև շունք լիրբք եղեն յանձինս իւրեանց՝ որք ոչ գիտեն զյագուրդ․ և են չարք՝ և ոչ ճանաչեն զհանճար․ ամենեքին ըստ իւրաքանչիւր ճանապարհաց իւրեանց գնացին։ 12 *Եկայք՝ առցուք զգինի․ և գինեհարիցուք արբեցութբ․ և եղիցի այնպէս օրն մեզ զոհ մեծ առնել յոյժ։

‖ Մատ. 21.13. Մարկ. 11.17. Ղուկ. 19.46.

## ԳԼ. ԾԷ.

1 Տեսէք՝ զիա՞րդ կորեաւ արդարն․ և չիք, որ անսայ սրտիւ․ և արք արդարք բառնին՝ և ոչոք հայի․ զի յերեսաց անիրաւութե բառնի արդար։ 2 *Եղիցի խաղաղութբ գերեզման նր․ զի բարձաւ ՚ի միջոյ։ 3 *Այլ դուք մատիք յառաջ՝ որդիք անօրէնք․ որդիք պոռնկորդիք․ որդիք չնութե։ 4 *Ի՞ւ պերճացայք․ կամ յո՞ր վր բացիք զբերանս ձեր․ և առ ո՞ արձակեցիք զլեզուս ձեր․ ո՞չ դուք որդիք կորստեան էք՝ զաւակք անօրէնութե։ 5 *Որք անկեալ աղաչէիք զկուռս ձեր ՚ի ներքոյ անտառախիտ ծառոց՝ զոհէիք զորդիս ձեր ՚ի խորաձորս․ ՚ի մէջ գլխոց վիմաց։ 6 *Եւ ՚ի կողմանս ձորոցն՝ այն է բաժին քո՝ և նոյն վիճակ քո․ նց հեղեր զնուէրս․ և նոցին մատուցեր զզոհս․ ՚ի վր այդր ամի ո՞չ բարկանայցեմ, ասէ Տր։ 7 *Ի լերինն մեծի և բարձու՝ անդ է անկողին քո․ և անդր ելեր զոհել զզոհս։ 8 *Եւ յետոյ դրանդեաց դրանց քոց հաստատեցեր զյիշատակս քո․ կարծէիր, եթէ յինէն ՚ի բաց կացցես, աւելի ինչ գտանիցես․ լայնեցեր զանկողինս քո․ և տարածեցեր զքեզ առնո-

ՂՂ

քօք․ սիրեցեր զհոմանիս քո։ 9 *Եւ բազմացուցեր զպոռնկութիս քո առ նա։ և զբազումս ՚ի հեռաւորաց արարեր քեզ․ և առաքեցեր հրեշտակս արտաքոյ սահմանաց քոց․ նկուն եղեր՝ և իջեր ՚ի դժոխս։ 10 *Եւ աշխատեցար ՚ի բազում ճանապարհորդութիս քո․ և ոչ ասէիր՝ թէ արդ հանգեայց․ զի զայն առ ուժի գործէիր․ վա՜յ այնորիկ ո՛չ հնազանդեցար ինձ։ 11 *Յումմէ՞ զանգիտեալ զարհուրեցար․ զի ստեցեր ինձ՝ և ոչ յիշեցեր զիս՝ և ոչ ածեր զմտաւ՝ և ոչ եդեր ՚ի սրտի քում։ և ես տեսի զքեզ՝ և անտես արարի։ ես այն եմ, որ յաւիտենից եմ․ և դու յինէն ոչ զանգիտեցեր։ 12 *Արդ ես պատմեցից զարդարութի իմ, և զչարիսն քո՝ որք ոչ օգնեցին քեզ։ 13 *Յորժամ աղաղակիցես․ և ոչ ապրեցուսցեն զքեզ ՚ի նեղութե քումմէ․ զի զամենեսեան զնս հողմք առցեն․ և մրրիկք բաժանեսցեն․ իսկ որք յիս յուսացեալք են՝ ստասցին զերկիրն․ և ժառանգեսցեն զլեառն սրբութե իմոյ։ 14 *‖ Եւ ասասցեն․ հորդեցէք առաջի նորա ճանապարհս․ և ՚ի բաց արարէք զխոչ և զխութ ՚ի ճանապարհէ ժողովրդեան իմոյ։ 15 *Այսպէս ասէ բարձրեալն՝ որ ՚ի բարձունս բնակեալ է յաւիտեան՝ ան ՚ի մէջ սրբոց․ որոյ անուն բարձրեալ է՝ և ՚ի սուրբս հանգուցեալ․ որ տայ զերկայնմտութի տարակուսելոց․ և կեանս այնոցիկ՝ որք մաշեալք են սրտիւք։ 16 *Եւ ոչ յաւիտեանս խնդրեցից զվրէժս ՚ի ձէնջ․ և ոչ ցանգ բարկացայց ձեզ․ զի հոգի յինէն ելցէ․ և զամ շունչ ես արարի։ 17 *Վասն մեղաց առ սակաւ մի տրտմեցուցի զնա․ հարի զնա՝ և դարձուցի զերեսս իմ ՚ի նմանէ․ և տրտմեցաւ՝ և գնաց թախծեալ առաջի իմ զճանապարհս իւր։ 18 *Զճանապարհս սորա տեսի․ և բժշկեցի զնա․ և մխիթարեցի զնա․ և ետու նմա մխիթարութի ճշմարտութե՝ և սգաւորաց նր։ 19 *Խաղաղութեան զպտուղ խաղաղութե ՚ի վերայ խաղաղութե հեռաւորաց և մերձաւորաց, ասէ Տր։ և ես բժշկեցից զնոսա։ 20 *Այլ անօրէնք իբրև զծով ծփեսցին՝ և զհանգիստ մի գտցեն․ և կորիցէ ջուր նորա ՚ի կոխումն և ՚ի կաւ։ 21 *‖ Ոչ գոյ խաղաղութի ամբարշտաց՝ ասէ Տր։

‖ Վեր. 62.10.
‖ Վեր. 48.21.

## ԳԼ. ԾԸ.

1 Գոչեա զօրութբ, և մի խնայեր․ բարձրացո իբրև փողոյ զբարբառ քո․ պատմեա ժողովրդեան իմոյ զմեղս նց․ և տանն յակոբայ զանօրէնու

թիս նց։ *2 Զիս օրըստօրէ խնդրեն՝ և ճանաչել զճանապարհս իմ ցանկան՝ իբրև ժողովրդեան՝ որոյ զարդարութի գործեալ իցէ․ և զիրաւունս Այ իւրոյ չիցէ թողեալ․ արդ՝ եկեալ խնդրեն զիրաւունս արդարութե․ կարօտին մեր ձեռնալ առ Ած։ *3 Ասեն՝ զի՞է՝ զի պահեցաք մեք՝ և դու ոչ տեսեր․ խոնարհեցուցաք զանձինս մեր՝ և դու ոչ գիտացեր․ զի յաւուրս պահոց ձերոյ գտանին կամք ձեր կատարեալք․ և կսկծեցուցանէք զամենեսեան․ որք ը̃ ձեռամբ ձերով են։ *4 Ի հակառակութիս և՛ի կռիւս պահէք՝ և կոփէք զանաճագն․ իսկ զի՞նչ պիտոյ են ինձ այն պիտոյ աւուր պահք․ գալ՝ բողոքել ձեզ առ իս՝ և ինձ ոչ լսել ձեզ։ *5 ‖Ո՛չ զայսպիսի պահս ընտրեցի․ և ո՛չ զօրն, յորում կրկամեցուցանէ մարդ զանձն իւր․ զի եթէ կորացուցանես իբրև զանուր զպարանոց քո․ և քուրձ և մոխիր 'ի ներքոյ քոյ տարածանիցես․ սակայն և ո՛չ զայն կոչեցից պահս՝ և օր ընդունելի։ *6 Ո՛չ զայնպիսի պահս ընտրեցի, ասէ Տր․ այլ լո՛յծ զկնճիռն անիրաւութե․ քակեա՛ զխարդախութի վաճառացքոյ․ արձակեա՛ զնեղեալս թողութբ․ և զա̃մ մուրհակս անիրաւութե պատառեա։ *7 ‖Բրդեա՛ քաղցելոց զհաց քո․ և զաղքատս անյարկս տա՛ր 'ի տուն քո․ եթէ տեսանիցես զմերկն, զգեցուցանիջի՛ր․ և յընտանեաց զաւակի քոյ զակն մի՛ արկանիցես։ *8 Յայնժամ ծագեսցի կանուխ լոյս քո․ և բժշկութի քեզ վաղվաղակի հասցէ։ և գնասցէ առաջի քո արդարութի՛ն քո․ և փառքն Այ զքեւ փակեսցեն։ *9 Յայնժամ կարդասցես՝ և Ած լուիցէ քեզ․ և մինչդեռ խօսեսցիս, ասասցէ՝ թէ ահաւասիկ հասեալ եմ․ և եթէ մերժեսցես դու 'ի քէն զկնճիռն՝ և զձեռնարձակութի և զբանս տրտնջման։ *10 Եւ տացես քաղցելոց զհաց քո սրտի մտօք․ և զանձինս կարօտեալս յագեցուսցես․ յայնժամ ծագեսցի 'ի խաւարի լոյս քո․ և խաւարն քո իբրև զմիջօրեայ։ *11 Եւ եղիցի Ած քո ընդ քեզ յա̃մ ժամ․ և լցցի ըստ ցանկութե անձն քո․ և ոսկերք քո պարարեսցին․ և եղիցի իբրև զպարտէզ ջրալից․ և իբրև զաղբիւր ուստի ջուր ոչ պակասիցի։ *12 ‖Եւ շինեսցին աւերակք քո յաւիտենից․ և եղիցին հիմունք քո մշտնջենաւորք յազգս ազգաց․ կանգնեսջի՛ր՝ և կոչեսջիր խրամնկարկատ ցանդոյ․ և զընդմիջաշաւիղս նոցա դադարեցուցես։ *13 Եթէ դարձուսցես զոտն քո չառնել զկամս քո յաւուր սրբութե․ և կոչեսցես զշաբաթս փափուկս նուիրեալս․ և ոչ փոխեսցես զոտն քո 'ի գործ․ և ո՛չ խօսեսցիս բան ինչ բարկութե բերանով քով։ *14 Եւ եղիցիս յուսացեալ 'ի Տր․ և տարցէ զքեզ 'ի բարութիս երկրին․ և ջամբեսցէ քեզ զժառանգութի յակոբայ հօր քոյ․ զի բերան Տն խօսեցաւ զայս։

[Margin: ‖Զաքա. 7. 5. ‖Եզեկի. 18. 7. Ղու. 16. Մատ. 25. 35. ‖Եսայ. 61. 4.]

## ԳԼ. ԾԹ.

1 Միթէ ‖ո՛չ իցէ կարող ձեռն Տն փրկել․ կամ ծանրացո՞յց ինչ զունկըն իւր՝ զի մի՛ լուիցէ։ *2 ‖Այլ մեղքն ձեր որոշեն 'ի մէջ ձեր՝ և 'ի մէջ Այ։ և վս անօրէնութեց ձերոց դարձոյց զերեսս իւր 'ի ձէնջ՝ զի մի՛ ողորմեսցի։ *3 ‖Զի ձեռք ձեր պղծեալք են արեամբ․ և մատունք ձեր 'ի մեղս։ շրթունք ձեր խօսեցան զանօրէնութի․ և լեզուք ձեր խոկան զանիրաւութի։ *4 Ոչ՝ոք որ խօսի զարդարութի․ և ո՛չ գոն իրաւունք ճշմարտութե։ յուսացեալ են 'ի սնոտիս․ և խօսին զունայնութի․ ‖զի յղանան զցաւս, և ծնանին զանօրէնութի։ *5 Զձուս քարբից ծակեցին․ և զոստայն սարդից անկանեն․ և որ կամիցի ուտել 'ի նոցանէն․ ծակեաց՝ եբաց՝ և եգիտ զջուր․ և 'ի նմին քարբ։ *6 Ոստայնք նոցա ոչ ձորձեսցին․ և ոչ զգեցցին 'ի գործոց ձեռաց իւրեանց․ քանզի գործք նոցա գործք անօրէնութե են․ և գործք անօրէնութե 'ի ձեռս նոցա։ *7 ‖Ոտք նց 'ի չարիս ընթանան․ վաղվաղեն հեղո՛ւլ զարիւն անպարտ։ խորհուրդք նոցա խորհուրդք անզգամաց․ բեկումն և թշուառութի 'ի ճանապարհս նց։ *8 Եւ զճանապարհն խաղաղութե ոչ ծանեան՝ և ոչ գոն իրաւունք 'ի ճանապարհս նց․ զի շաւիղք նց ընդորս գնան, խոտորեալք են․ և ոչ ծանեան զխաղաղութի։ *9 Վս այնորիկ հեռացան 'ի նոցանէ իրաւունք․ և մի՛ հասցէ առ նոսա արդարութիւն։ մինչդեռ ակնունէին լուսոյ՝ եղև նոցա խաւար։ և մինչդեռ սպասէին նմա՝ ը̃ մութն շրջեցան։ *10 Շօշափեսցեն զորմն իբրև կոյրք․ և իբրև զաչացաւս խարխափեսցին։ և գլորեսցին 'ի միջօրէի իբրև 'ի հասարակ գիշերի։ իբրև օրհասականք ընդ ոտիւս ջանայցեն։ *11 Եւ իբրև զարջս, և իբրև զաղաւնիս առ հասարակ սահեսցին։ կացաք՝ մնացաք իրաւանց՝ և ո՛չ էր․ և փրկութիւն հեռացաւ 'ի մէնջ։ *12 Զի բազումք են անօրէնութիւնք մեր առաջի քո․ և մեղք մեր հակառակ կային մեզ․ զի անօրէնութիւնք մեր 'ի մեզ են․ և զանիրաւութիւնս մեր․ մեք մեղէն գիտեմք։

*Ա՟մ

[Margin: ‖Թուոց 11. 23. ‖Եսայ. 50. 2. ‖Եսայ. 1. 15. ‖Յոբ 15. 35. Մատ. 7. 15. ‖Հռով. 3. 15. Առակ. 1. 16.]

13 * Ամպարշտեցաք՝ և ստեցաք Տն. և դարձաք յետս յԱյ մերմէ. խօսեցաք զանիրաւութիւն և հեստեցաք. յղացաք՝ և որոճեցաք 'ի սիրտս մեր զբանս անիրաւութեան: 14 * Յետս հարաք զիրաւունս. և արդարութիւն հեռացաւ 'ի մէնջ. զի սպառեցաւ 'ի ճանապարհաց նց ճշմարտութիւն. և ընդ ուղորդն ոչ կարացին գնալ: 15 * Եւ արդարութիւն բարձաւ 'ի նոցանէ. մերժեցին զմիտս իւրեանց յիմանալոյ. ետես Տր, և ոչ հաճեցաւ. զի ոչ գոյին իրաւունք: 16 * Հայեցաւ՝ և ոչ գոյր մարդ. ետես՝ և ոչ գոյր, որ օգնական լինէր: և հատոյց նց բազկաւ իւրով. և ըստ ողորմութեան իւրում հաստատեաց: 17 * ‖ Եւ զգեցաւ իբրև զզրահս զարդարութիւն. և եդ 'ի գլուխ իբրև զսաղաւարտ զփրկութիւն. և արկաւ զիւրև զհանդերձ՝ և զպատմուճան վրէժխնդրութեան, հատուցանել զհատուցումն: 18 * Եւ նախատինս հակառակորդաց՝ և կղզեաց հատուցէ զհատուցումն: 19 * Եւ երկիցեն յարևմտից յանուանէ Տն. և յարևելից 'ի փառաւորեալ անուանէ նր. զի եկեսցէ իբրև գետ բռնութեան բարկութիւն 'ի Տէ. հասցէ սրտմտութեամբ. 20 * ‖ Եւ եկեսցէ 'ի սիոնէ փրկիչ՝ և դարձուսցէ զամպարշտութիւնս յակոբայ, ասէ Տր. 21 * Եւ այս նոցա որ յինէն ուխտ՝ ասէ Տր. հոգին իմ որ է 'ի քեզ, և բանքն՝ զորս ետու 'ի բերան քո՝ մի պակասեսցին 'ի բերանոյ քումմէ. և 'ի բերանոյ զաւակի քոյ. և 'ի բերանոյ զաւակի զաւակի քոյ՝ ասէ Տր. յայսմհետէ մինչև յաւիտեան:

‖ Եփես. 6. 17. 1. Թեսաղ. 5. 8.

‖ Հռոմ. 11. 26.

## Գլ: Կ:

1 Լուսաւորեա՛ց՝ լուսաւորեա՛ց Եմ. զի հասեալ է լոյս քո. և փառքն Տն 'ի վր քո ծագեսցին: 2 * Զի ահա խաւար ծածկեսցէ զերկիր՝ և մառախուղ զհեթանոսս. բայց 'ի քեզ Տր յայտնեսցի. և փառք նր 'ի քեզ երևեսցին: 3 * Եւ գնասցեն թագաւորք 'ի լոյս քո. և հեթանոսք 'ի ծագել լուսոյ քոյ: 4 * ‖ Համբարձ շուրջ զաչս քո. և տես ժողովեալ առ քեզ զամ մանկունս քո. զի եկին՝ հասին 'ի հեռաստանէ որդիք քո. և դստերք քո 'ի վր ուսոց նոցա բարձեալք բերիցին: 5 * Յայնժամ տեսցես՝ և խնդասցես. երկիցես՝ և զարհուրեսցիս 'ի սրտի քում: զի փոխեսցի 'ի քեզ մեծութիւն ծովու. և ազգաց՝ և ժողովրդոց: 6 * Եկեսցեն 'ի քեզ երամակք ուղտուց. և ծածկեսցեն զքեզ ուղտերամակքն մադիամու՝ և գեփայ: ամենեքեան 'ի սաբայէ եկեսցեն, բերել ոսկի և կնդրուկ՝ և ականս պատուականս. և փրկութեան Տն աւետիս: 7 * Եւ ամ խաշինք կեդարու ժողովեսցին առ քեզ. և խոյք նաբէօթայ եկեսցեն. և մատուսցին ընդունելի պատարագք 'ի վերայ սեղանոյ իմոյ. և տուն աղօթից իմոց փառաւորեսցի: 8 * Ո՞վ են սոքա՝ որք իբրև զամպս թռուցեալքեն. և իբրև զաղաւնիս ձագախառն երամովին 9 գան առ իս: * Ինձ ակն ունին կղզիք՝ և նաւք թարշշի յառաջագոյն ածել զորդիս քո 'ի հեռաստանէ: զարծաթ և զոսկի ընդ իւրեանս. վասն անուան Տն սրբոյն. և վն սրբոյն իէի փառաւորելոյ: 10 * Եւ շինեսցեն որդիք այլազգեաց զպարիսպս քո. և թագաւորք նոցա ընծայեսցին քեզ: զի վն բարկութեան իմոյ հարի զքեզ. և վասն ողորմութեան 11 իմոյ սիրեցի զքեզ: * ‖ Եւ բացցին դրունք քո հանապազորդ 'ի տուէ և 'ի գիշերի. և մի փակեսցին. կրել 'ի քեզ զզօրութիւն ազգաց: և զթագաւորս 12 իւրեանց ածցեն առ քեզ: * Զի ազգք և թագաւորք՝ որք քեզ ոչ ծառայեսցեն, կորիցեն. և ազգքն աւերեսցին: 13 * Եւ փառքն լիբանանու առ քեզ եկեսցեն. սարդիւն և սոսիւ. նոճիւն և մայրիւ առ հասարակ փառաւոր առնել զտեղի սրբութեան իմոյ. և զտեղի ոտից իմոց փառաւորեցից: 14 * Եւ եկեսցեն առ քեզ զարհուրեալք որդիք նեղչացն քոց՝ և զարհուրեցուցչաց. և երկիր պագցեն հետոց ոտից քոց ամենեքին. որք զարհուրեցուցանէին զքեզ. և կոչեսջիր քաղաք 15 Տն սիոն սրբոյն իէի: * Վն զի եղեր դու լքեալ և ատեցեալ. և ոչոք էր, որ օգնէր: և արարից զքեզ յուրախութիւն յաւիտենական՝ և ցնծութիւն յազգաց 16 յազգս: * Եւ դիեցես զկաթն հեթանոսաց. և զմեծութիւն թագաւորաց կերիցես: և ծանիցես՝ թէ ես եմ Տր. որ ապրեցուցանեմ՝ և փրկեմ զքեզ 17 Այ իէի: * Եւ փոխանակ պղնձոյն բերից քեզ զոսկի. և փոխանակ երկաթոյն բերից քեզ զարծաթ. և փոխանակ փայտի բերից քեզ պղինձ. և փոխանակ քարի տաց քեզ զերկաթ. և տաց զիշխանս քո 'ի խաղաղութիւն և 18 զայցելուս քո յարդարութիւն: * Եւ ոչ ևս լուիցի անիրաւութիւն յերկրի քում. և ոչ բեկումն և թշուառութիւն 'ի սահմանս քո: այլ կոչեսցին փրկութիւն պարիսպք քո. և դրունք քո ցնծութիւն: 19 * ‖ Եւ ոչ ևս եղիցի քեզ արեգակն 'ի լոյս տուընջեան. և ոչ ծագումն լուսնի տացէ քեզ զլոյս 'ի գիշերի: այլ եղիցի քեզ Տր լոյս յաւիտենական՝ և

‖ Վեր. 49. 18.

‖ Յայտ. 21. 25.

‖ Յայտ. 21. 23. և 22. 5.

փառք քո ԱԾ: 20 * Ոչ մտցէ քեզ արեգակն. և լուսին 'ի քէն մի պակասեսցի. և եղիցի քեզ Տր լոյս յաւիտենական, և կատարեսցին աւուրք սգոյ քոյ: 21 * Եւ ժողովուրդ քո ամենեքին արդար. և յաւիտեան ժառանգեսցեն զերկիր. պահել զնորատունկ գործոց ձեռաց իւրեանց 'ի փառս: 22 * Սակաւաւորն հազարաւոր եղիցի. և կրտսերն յազգ մեծ. զի ես Տր ընդ ժամանակս ժամանակս ժողովեցից զնոսա:

## ԳԼ: ԿԱ.

‖ Ղուկ. 4.18.

1 Հոգի ‖ Տն 'ի վր իմ. վն որոյ և օծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս. բժշկել զբեկեալս սրտիւք. քարոզել գերեաց զթողութի և կուրաց տեսանել: 2 * Կոչել ամ Տն ընդունելի. և օր հատուցման ԱՅ մերոյ. ‖ մխիթարել զամ սգաւորս:

‖ Մատ. 5. 5.

3 * Տալ սգաւորաց սիոնի փառս. փոխանակ մոխրոյն օծումն ուրախութե. և սգաւորացն հանդերձ փառաց՝ փոխանակ ոգւոյն վհատութե: և կոչեսցին նոքա ազգք արդարութե՝ տունկ Տն 'ի փառս: 4 * ‖ Եւ շինեսցեն զաւերակսն յաւիտենից. և զյառաջագոյն աւերեալսն կանգնեսցեն. և նորոգեսցեն զքաղաքս աւերեալս յազգաց մինչև յազգս:

‖ Եսա. 58.12.

5 * Եւ եկեսցեն օտարածինք հովիւք խաշանց քոց. և այլազգիք մաճակալք և այգեգործք քո: 6 * Բայց դուք քահանայք Տն կոչիջիք՝ և պաշտօնեայք ԱՅ մերոյ անուանիջիք. զզօրութիւն ազգաց կերիջիք. և մեծութբ նց սքանչելի լինիջիք: 7 * Փոխանակ ամօթոյն ձերոյ կրկին ուրախութի. և փոխանակ անարգանաց ձերոց ցնծութի. և ապա զերկիրն յերկրորդում ժառանգեսցեն. և ուրախութի յաւիտենից 'ի վր գլխոյ նց: 8 * Զի ես եմ Տր՝ որ սիրեմ զարդարութի. և ատեմ զյափշտակութիւն յանիրաւութե. և տաց զվաստակս նոցա արդարոց. և ուխտ յաւիտենից ուխտեցից ընդ նս: 9 * Եւ ծանիցի 'ի մէջ ազգաց զաւակ նց. և ծնունդք նոցա 'ի մէջ ժողովրդոց. ամենեքին որք տեսանիցեն՝ ճանաչիցեն զնոսա. և ասիցեն՝ թէ սոքա են զաւակք օրհնեալք յԱՅ: և ուրախութբ ուրախ եղիցին 'ի Տր: 10 * Ցնծասցէ անձն իմ 'ի Տէր. զի զգեցոյց ինձ զհանդերձ փրկութե և զպատմուճան ուրախութե. իբրև փեսայի եդ ինձ զպսակ. և իբրև զհարսն զարդու զարդարեաց զիս: 11 * Եւ իբրև զերկիր՝ որ աճեցուցանէ զծաղիկս իւր. և իբրև զպարտէզ՝ որ բուսուցանէ զսերմանիս իւր. այնպէս ծաղկեցուսցէ Տր զարդարութի իւր՝ և զցնծութի առաջի ամենայն ազգաց:

## ԳԼ: ԿԲ.

1 Վասն սիոնի ոչ լռեցից. և վն Եմի ոչ ներեցից. մինչև ծագեսցի իբրև լոյս արդարութի նր. և փրկութի նորա իբրև զփայլակն վառեսցի: 2 * Եւ տեսցեն հեթանոսք զարդարութի քո. և թագաւորք զփառս քո. և կոչեսցի քեզ անուն նոր. զոր Տր անուանեսցէ: 3 * Եւ եղիցիս պսակ վայելչութե 'ի ձեռին Տն. և թագ արքայութե 'ի ձեռին ԱՅ քոյ: 4 * Եւ ոչ ևս կոչեսցիս լքեալ. և երկիրն քո ոչ ևս կոչեսցի աւերակ. զի քեզ անուն կոչեսցին կամք իմ. և երկրին քում շինութի բնակութե. զի հաճեսցի Տր ընդ քեզ. և երկիրն քո խառնեսցի 'ի բնակութի: 5 * Զորօրինակ բնակի երիտասարդ ընդ կուսի՝ այնպէս բնակեսցին որդիք քո 'ի քեզ. և եղիցի՝ զորօրինակ բնակի փեսայ առ հարսին՝ այնպէս ուրախ լիցի Տր 'ի քեզ: 6 * Եւ 'ի վր պարսպաց քոց եդի պահապանս կացուցից, զօրն ողջոյն և զգիշերն ողջոյն. որ մինչև յանդ մի դադարեսցեն յիշել զՏր: 7 * Զի ոչ գոյ նման ձեզ. եթէ ուղղեսցէ՝ և արասցէ Եմի պարծանս 'ի վր երկրի: 8 * Երդուաւ Տր 'ի փառս իւր՝ և 'ի զօրութի բազկի իւրոյ. եթէ ոչ տաց զցորեան քո և զկերակուր 'ի ձեռս թշնամեաց քոց: և ոչ արբցեն որդիք օտարաց զգինի քո՝ յորում դուն վաստակեցեր: 9 * Այլ որք ամփոփեսցին՝ կերիցեն զնա՝ և օրհնեսցեն զՏր: և որք ժողովեսցենն զնա, արբցեն 'ի սրահս սրբութեց իմոց: 10 * Երթայք՝ մտէք ընդ դրունս իմ. կազմեցէք զճանապարհս՝ հորդեցէք զշաւիղս. ‖ գործեցէք ճանապարհ ժողովրդեան իմոյ. և զքարինս 'ի ճանապարհէ անտի 'ի բաց ընկեցէք. առէք նշան 'ի հեթանոսս:

‖ Եսա. 57.14.

11 * Զի ահաւասիկ Տր լսելի արար մինչև 'ի ծագս երկրի. ‖ ասացէք դստեր սիոնի. ահաւասիկ փրկիչ քո հասեալ գայ՝ և ունի զվարձս իւր ընդ իւր. և գործ իւր առաջի երեսաց իւրոց: 12 * Եւ կոչեսցէ զնա ժողովուրդ սբ՝ փրկեալ 'ի Տէ. և դու կոչեսցիս խնդրեալ քաղաք՝ և ոչ լքեալ:

‖ Զաք. 9. 9. ‖ Մատ. 21.5.

## ԳԼ: ԿԳ.

1 Ով այս ոք է՝ որ դիմեալ գայ յեդոմայ. կարմրութի ձորձոց իւրոց 'ի բոսորայ. գեղեցիկ պատմուճանաւ և բուռն զօրութբ: ես խօսիմ զար-

դա-

դարութ՟ե և իրաւունս փրկութեան ։ *‖ Մ՟ է՞ր կարմիր են ձորձք քո․ և հան 2 դերձք քո իբրև հնձանահարի լիոյ հնձանի կոխելոյ ։ *Հնձան հարի միայն՝ 3 և ՚ի հեթանոսաց ոչոք էր ընդ իս․ կոխեցի զնո՟ սրտմտութ՟բ՝ և ձմլեցի զնոսա բարկութ՟բ՝ և իջուցի յերկիր․ և զա՟մ հանդերձս իմ թաթաւեցի ։ *‖ Զի 4 հասեալ էր ՚ի վ՟ր ն՟ց օր հատուցման․ և ամ փրկութ՟ե եկեալ հասեալ ։ *Հայեցայ՝ և ոչոք էր՝ որ օգնէր․ զմտաւ 5 ածի՝ և ոչոք էր՝ որ ՚ի թիկունս հասանէր ։ փրկեաց զնո՟ բազուկ իմ․ և սրտմտութ՟ի իմ միայն զդէմ կալաւ ։ *Կոխեցի զնո՟ բարկութ՟բ իմով՝ և զենի 6 զնո՟ սրտմտութ՟բ իմով․ և իջուցի զնո՟ յերկիր ։ *Զողորմութ՟ի Տ՟ն յիշեցից․ 7 զքաջութ՟ի Տ՟ն յուչ արարից՝ յա՟մի զոր ինչ հատուցանէ մեզ Տ՟ր․ Տ՟ր դատաւոր բարերար տանն ի՟ղի․ որ ածէ ՚ի վ՟ր մեր ըստ ողորմութեան իւրոյ՝ և ըստ բազում արդարութ՟ե իւրոյ ։ *Եւ ա- 8 սաց՝ եթէ ժողովուրդ իմ են որդիքն իմ․ և ոչ անարգեսցեն զիս․ և եղև ն՟ց ՚ի փրկութ՟ի ։ *Յա՟մ նեղութ՟ե ն՟ց ։ ոչ 9 պատգամաւոր ոք․ և ոչ հրեշտակ, այլ ինքնին Տ՟ր փրկեաց զնո՟․ վ՟ս սիրելոյն զնո՟ և խնայելոյն ՚ի նոսա՝ ինքնին փրկեաց զնո՟․ և վերացոյց զնոսա․ և բարձրացոյց զա՟մ աւուրս յաւիտենից ։ *Բայց նոքա հեստեցին․ և բարկացու- 10 ցին զհոգի ն՟ր ս՟բ․ և դարձաւ ն՟ց Տ՟ր ՚ի թշնամութ՟ի․ ինքնին ետ ընդ ն՟ո պատերազմ ։ *Եւ յիշեաց զաւուրսն յաւի- 11 տենից ։ թէ ո՞ւր է մովսէս և ժողովուրդն ն՟ր․ ‖ որ եհան յերկրէ զհովիւն հօտից․ ո՞ւր է՝ որ ետ ՚ի նոսա զհոգին Տ՟ն ։ *Որ 12 վերացոյց աջով իւրով զմովսէս․ և ՚ի բազուկ փառաց նորա յաղթահարեաց զջուրս առաջի երեսաց ն՟ր․ առնել իւր անուն յաւիտենական ։ *Էնցոյց զնո՟ 13 ընդ անդունդս ո՟ր ձի ընդ անապատ ։ *Եւ իբրև գրաստ ինչ ընդ դաշտ․ և 14 ոչ վաստակեցան․ էջ հոգի ՚ի Տ՟է, և առաջնորդեաց նոցա ։ այնպէս ածեր զժողովուրդն քո՝ առնել քեզ անուն փառաց ։ *‖ Եւ արդ դարձ յերկնից՝ և 15 տես ՚ի տաճարէ սրբոյ քումմէ՝ և փառաց քոց․ ո՞ւր է նախանձ քո՝ և զօրութ՟ի քո․ ո՞ւր է բազում ողորմութ՟ի գթութ՟ե քոյ․ որով ներէիր մեզ ։ *Զի դու 16 ես մեր հայր․ զի աբրահամ ոչ գիտաց զմեզ՝ և իէլ ոչ ծանեաւ զմեզ․ այլ դու հայր մեր փրկեա՛ զմեզ․ զի ՚ի սկզբանէ անուն քո է ՚ի վ՟ր մեր ։ *Զի՞ մոլորե- 17 ցուցեր զմեզ ՚ի ճանապարհաց քոց․ խստացուցեր զսիրտս մեր չերկնչիլ ՚ի քէն ։ դարձ վ՟ս ծառայից քոց․ դարձ 18 վ՟ս ազգաց ժառանգութ՟ե քոյ ։ *Փոքու ցէ ոչ ժառանգիցեմք զլեառն սրբութ՟ե քոյ․ հակառակորդք մեր նեղեցին զմեզ՝ և կոխեցին զսրբութ՟ի քո ։ 19 *Եղեաք իբրև զառաջինն՝ յորժամ ո՛չ նայէիր ՚ի մեզ․ և ոչ կոչեցեալ էր անուն քո ՚ի վերայ մեր ։

‖ Յայտ. 19.13. ‖ Ե իջուցի յերկիր զարիւն նոցա. ‖ Ն՟ց յերկիրս. ‖ Մ՟ եր. 34.8. ‖ Ե իջուցի զարիւն նոցա. ‖ ՟ն ներս զ՟ն է իւր ոյ՝ և ՟ն բազում ողորմութ՟ե. ‖ Եղեց. 14.29. ‖ Եւ բուժա. ‖ 2. Օրէ 26.15. ‖ Բարո. 2. 16.

## Գ՟Լ ։ ԿԴ՟ ։

1 Եթէ բացցես զերկինս, դողութ՟ի 2 կալցի ՚ի քէն զլերինս ։ *Եւ հալեսցին իբրև զմոմ առաջի հրոյ․ և այրեսցէ հուր զհակառակորդս քո․ և յայտնի լիցի անուն քո ընդդիմակացս քոց ։ յերեսաց քոց հեթանոսք խռո- 3 վեսցին ։ *Յորժամ առնիցես փառաւորութ՟իս, դողութ՟ի կալցի ՚ի քէն զլե- 4 րինս ։ *‖ Յաւիտենից ոչ լուաք․ և ո՛չ տեսին աչք մեր այլ Ա՟Ծ, բաց ՚ի քէն․ և զգործս քո զոր արասցես այնոցիկ․ որք ակն ունին ողորմութ՟ե քում ։ 5 *Զի ընդ առաջ լիցի այնոցիկ՝ որք առնեն զիրաւունս․ և զճանապարհս քո յիշեսցեն․ արդ ահա դու բարկացար՝ և մեք մեղաք ։ վ՟ս այնորիկ մոլո- 6 րեցաք ։ *Եւ եղեաք իբրև զպիղծս ամենեքեան․ իբրև զհանդերձս ապահարից ա՟մ արդարութ՟ի մեր․ և թօթափեցաք իբրև զտերև ամենեքին մեք․ վ՟ս անօրէնութ՟եց մերոց հողմք 7 մերժեցին զմեզ ։ *Եւ ոչոք իցէ՝ որ կարդասցէ զանուն քո․ և ո՛չ որ յիշեսցէ ապաստան առնել զքեզ․ զի դարձուցեր զերեսս քո ՚ի մէնջ՝ և մատնե- 8 ցեր զմեզ վ՟ս մեղաց մերոց ։ *Եւ արդ Տ՟ր՝ հայր մեր դու ես․ մեք կաւ, և դու ստեղծիչ մեր․ և գործք ձեռաց քոց 9 ամենեքին մեք ։ *‖ Մի՛ բարկանար մեզ Տ՟ր յոյժ․ և մի՛ ՚ի ժամանակի յիշեր զմեղս մեր ։ և արդ հայեա՛ց Տ՟ր․ զի ժո- 10 ղովուրդ քո ա՟մ ։ *Եւ քաղաք սրբութ՟ե քոյ սիոն եղև աւերակ ։ իբրև զա- 11 նապատ եղև երուսաղէմ ։ *Յանէծս մատնեցաւ տուն սրբութ՟ե քոյ․ և փառքն զորս օրհնեցին հարքն մեր՝ եղեն հրձիգք․ և ա՟մ փառաւորութ՟ին 12 մեր կործանեցաւ ։ *Եւ ՚ի վ՟ր ա՟մի այսորիկ անսաս Տ՟ր․ և լռեցեր․ և խոնարհ արարեր զմեզ մինչև յոյժ ։

‖ 1. Կորն. 2. 9. ‖ Սաղմ. 78.8. ‖ Կա եմ. ‖ Ն․ եւ ամենա.

## Գ՟Լ ։ ԿԵ ։

1 Յայտնի ‖ եղէ այնոցիկ՝ որք զինէն ոչ հարցանէին․ գտայ այնոցիկ՝ որք զիս ոչ խնդրէին ։ ասացից, աւասիկ եմ, ցազգն ցայն՝ որք զանուն իմ 2 ոչ կարդային ։ *Զօրհանապազ ձգեցի զձեռս իմ առ ժողովուրդն անհաւան և հակառակօղ․ որք գնային զճանա-

‖ Հռոմ. 10.20.

նապարհ որ ոչ էր բարւոք ․ այլ զհետ մեղաց իւրեանց ։ 3 * Ժողովուրդս այս որ բարկացուցանէր զիս ․ առաջի իմ հանապազ զոհէին 'ի պարտէզս իւրեանց ․ և արկանէին խունկս յաղիւսեայս իւր եանց ։ 4 * Դիւաց որք չէին՝ յիշատակս իւրեանց ․ և յայրս կողմանեալ ննջէին վասն երազ տեսանելոյ ․ որք ուտէին զխոզենին՝ և զարգանակ զոհիցն ․ և ամանք նոցա պղծեալք էին ։ 5 * Որք ասէին 'ի բաց կաց յինէն ․ մի՛ մերձենար յիս , զի սուրբ եմ ․ այս է ծուխ բարկութեան իմոյ՝ յորում հուր բորբոքեալ է զամենայն աւուրս ։ 6 * Ահաւասիկ գրեալ է առաջի իմ ․ ո՛չ լռեցից՝ մինչև հատուցից 'ի ծոցս նոցա ։ 7 * Զմեղս նոցա՝ և զմեղս հարց նոցա 'ի միասին՝ ասէ Տէր ․ որք արկանէին խունկս 'ի վերայ լերանց ․ և 'ի վերայ բլրոց ․ ուր նախատէինն զիս ․ հատուցից ըզ գործս նոցա՝ յառաջագոյն 'ի ծոցս նոցա ։ 8 * Այսպէս ասէ Տէր ․ զորօրինակ եթէ գտանիցի ճիռ 'ի մէջ ողկուզոյ ․ և ասի ցեն ․ մի՛ ապականէր զդա ․ զի օրհնութիւն Տեառն գոյ 'ի դմա ․ այնպէս արարից վասն ծառային իմոյ ․ վասն որոյ ո՛չ կորուսից զամենեսեան ։ 9 * Եւ հանից զզաւակ 'ի յակոբայ՝ և յուդայ ․ և ժառանգեսցեն զլեառն սրբութեան իմոյ ․ և ժառանգեսցեն ընտրեալք իմ՝ և ծառայք իմ ․ և բնակեսցին 'ի նմա ։ 10 * Եւ եղիցին յանտառին մակաղատեղք հօտից ․ և ձորն նաքորայ հանգիստ անդէոց ժողովրդեան իմոյ՝ որք խնդրեցինն զիս ։ 11 * Այլ դուք թողէք զիս ․ և մոռացայք զլեառն սրբութեան իմոյ ․ և կազմէիք դի ւաց սեղան ․ և խառնէիք խառնելիս բախտից ։ 12 * Ես մատնեցից զձեզ 'ի սուր ․ և ամենեքեան կոտորիջիք ․ ‖ զի կոչեցի զձեզ՝ և ոչ լուայք ․ խօսեցայ՝ և ստորնգանեցիք ․ և արարիք չար ա ռաջի իմ ․ և զոր ոչն կամէի , ընտրեցիք ։ 13 * Վասն այսորիկ այսպէս ասէ Տէր ․ ա հաւասիկ որք ծառայենն ինձ , կերի ցեն՝ և դուք քաղցիջիք ․ ահաւասիկ որք ծառայենն ինձ , արբցեն՝ և դուք ծարաւիջիք՝ ահաւասիկ ոյք ծառայ ենն ինձ , ուրախ լիցին՝ և դուք ամաչես ջիք ։ 14 * Ահաւասիկ որք ծառայենն ինձ , ցնծասցեն ուրախութեամբ սրտից՝ և դուք աղաղակեսջիք առ ցաւս սրտից ձերոց ․ և առ բեկման ոգւոց ձերոց ողբասջիք ։ 15 * Զի թողջիք զանուն ձեր 'ի յագուրդ ընտրելոց իմոց ․ և զձեզ Տէր սատակես ցէ ․ և ծառայիցն իմոց կոչեսցի անուն նոր ։ 16 * Որ օրհնեսցի 'ի վերայ երկրի ․ զի օրհնեսցեն զՏէր Աստուած ճշմարիտ ․ և որք երդնուցուն 'ի վերայ երկրի ․ երդնուցուն յԱստուած ճշմարիտ ․ զի մոռասցին զնեղու թիւնն զառաջին ․ և ոչ ևս անկանիցի 'ի սիրտս նոցա ։ 17 * ‖ Զի եղիցին երկինք նոր՝ և երկիր նոր ․ և ո՛չ ևս յիշեսցեն զառա ջինսն ․ և ո՛չ ևս անկցի 'ի սիրտս նոցա ։ 18 * Այլ ուրախութիւն և ցնծութիւն գտցի 'ի նմա ․ զոր ես հաստատեցից ․ զի ա հաւասիկ ես առնեմ զԵրուսաղէմ ցնծութիւն ․ 19 և զժողովուրդ իմ ուրախութիւն ․ * Եւ ցնծացայց 'ի վերայ Երուսաղեմի ․ և ուրախ եղէց 'ի վերայ ժողովրդեան իմոյ ․ և ո՛չ ևս լուի ցի 'ի նմա ձայն լալոյ՝ և ձայն գուժի ․ 20 * Եւ մի՛ լիցի անդ տարաժամ աւուրց ․ և ծեր որոյ ոչ իցէ լցեալ զժամանակս իւր ․ զի եղիցի կրտսեր որդին հարիւր ամեան ․ և որ հարիւրամեանն մեռա նիցի , մեղաւոր և անիծեալ կոչեսցի ։ 21 * Շինեսցեն տունս՝ և ինքեանք բնա կեսցին ․ տնկեսցեն այգիս՝ և ինքեանք 22 կերիցեն զպտուղս նոցա ։ * Եւ մի՛ ևս նք շինեսցեն՝ և այլք բնակեսցին ․ և նոքա տնկեսցեն՝ այլք կերիցեն ․ ըստ աւուրց փայտին կենաց եղիցին աւուրք ժողո վրդեան իմոյ ․ գործք ձեռաց նոցա հնաս 23 ցին ։ * Եւ ընտրեալք իմ մի՛ ևս վաս տակեսցին ընդունայն ․ և ո՛չ ևս ծնա նիցին որդիս յանէծս ․ զի զաւակք օրհ նեալք են յԱստուծոյ՝ և ծնունդք նոցա ընդ 24 նոսա ։ * ‖ Եւ եղիցի՝ մինչչև կարդա ցեալ իցէ նոցա՝ ես լուայց նոցա ․ և մինչ դեռ խօսիցին , ասացից՝ եթէ զի՛նչ 25 խնդրէք ։ * Յայնժամ ժամանակի ‖ գայլք և գառինք 'ի միասին ճարակեսցին ․ և առիւծ իբրև զեզն յարդ կերիցէ ․ և օձ զհող իբրև զհաց կերիցէ ․ մի՛ մե ղիցեն , և մի՛ վնասեսցեն զոք 'ի լերին սրբութեան իմոյ ասէ Տէր ։

## ԳԼ. ԿԶ.

1 Այսպէս ասէ Տէր ․ ‖ երկինք աթոռ իմ են՝ և երկիր պատուանդան ոտից իմոց ․ ո՛րպիսի տուն շինեցիք ինձ ․ ասէ Տէր ․ կամ ո՛րպիսի ինչ իցէ այն տե 2 ղի հանգստեան իմոյ ։ * Զի զայս ամ ձեռն իմ արար՝ և իմ է ամ՝ ասէ Տէր ․ և ես յո՞ հանգեայց ․ եթէ ոչ 'ի հեզս՝ և 'ի խոնարհս՝ և որ դողայ 'ի բանից 3 իմոց ։ * Բայց անօրէնն՝ որ մատուցա նէ զեզն պատարագ՝ այնպէս է՝ որպէս թէ հարկանիցէ ոք զկառափն մարդոյ ․ և որ մատուցանէ զոչխար պատարագ ․ այնպէս է՝ որպէս թէ զշուն ոք մորթիցէ ․ որ մատուցանիցէ ոք նաշիհ ․ այսպէս է՝ որպէս թէ հեղուցու ոք զարիւն խոզի ․ և որ տայցէ զկնդրուկ 'ի խունկյիշա տակաց ․ այնպէս իցէ՝ որպէս զհայհոյիչն ․ և ինքեանք ընտրեցին զճանապարհս իւրեանց ․ և զգարշելիս իւրեանց՝ զոր անձինք իւրեանց ախորժեցին ։ * Ես

Առակ. 1. 24. Երեմ. 7. 13. Ես. 66. 4.

Ես. 66. 22. Յայտ. 21. 1. 2. Պետ. 3. 13. Ես. 31. 5. Ես. 11. 6. Գործ. 7. 49.

4 *Եւ ես առից 'ի ձեռն զխաբէութիւնս նց̃. և ըստ մեղաց նոցա հատուցից նց̃ ։ ‖ զի կոչեցի զնոսա՝ և ոչ լուան ինձ. խօսեցայ՝ և ոչ անսացին. և արարին զչար առաջի իմ. և զոր ոչն կամէի, ընտրեցին ։ 5 *Լուարուք զպատգամ Տն̃. որք դողայք 'ի բանից նր̃ ։ խօսեցարուք եղբարք մեր ընդ ատելիս ձեր՝ և զ̃ի գարշեցուցիչսն ։ զի անուն Տն̃ փառաւորեսցի. և երևեսցի յուրախութեն ձերում. և նոքա ամաչեսցեն ։ 6 *Ձայն բարբառոյ 'ի քաղաքէ. ձայն 'ի տաճարէ. ձայն Տն̃ հատուցանէ զհատուցումն հակառակորդաց ։ 7 *Մինչև իցէ յղւոյն ծնեալ. և մինչև իցեն հասեալ ցաւք երկանց. ապրեցաւ, և ծնաւ արու ։ 8 *Ո՞ լուաւ. ո՞ ետես այսպիսի ինչ. եթէ երկնեաց երկիր 'ի միում աւուր. և ծնաւ ազգ մի ողջոյն միանգամայն. զի երկնեաց սիոն, և ծնաւ զմանկունս իւր ։ 9 *Ես ետու քեզ զյոյս զայդ. և դու ոչ յիշեցեր զիս՝ ասէ Տր̃ ։ ոչ ապաքէն զամուլն և զծննդականն ես արարի՝ ասէ Ա̃ծ քո ։ 10 *Ուրախ լեր Եմ̃. և ժողովեցարուք առնել տօն 'ի դմա. ամենեքին ոյք սիրէք զդա. խնդացէք՝ և ուրախ լերուք 'ի միասին՝ որք նստէիք 'ի սուգ վ̃ն դորա ։ 11 *Զի դիեցէք՝ և յագեցջիք 'ի ստեանց մխիթարութեան դորա. և կշտացելոք վայելեցէք 'ի գալստենէ փառաց դորա ։ 12 *Զի այսպս̃ ասէ Տր̃. ահաւասիկ ես դարձուցանեմ 'ի դոսա իբրև զգետ զխաղաղութի. և իբրև զհեղեղատ յորդեալ զփառս հեթանոսաց ։ զմանկունս դոցա 'ի վերայ ուսոց իւրեանց բարձեալ բերիցեն. և 'ի վ̃ր ծնգաց իւրեանց գգուեսցեն ։ 13 *Որպս̃ մայր՝ որ զմանուկ իւր գգուիցէ. այնպս̃ գգուեցից զձեզ. և յԵմ̃ մխիթարեսջիք ։ 14 *Եւ տեսջիք՝ և խնդասցեն սիրտք ձեր. և ոսկերք ձեր իբրև զդալարի զուարճասցին. և ծանիցի ձեռն Տն̃ երկիւղածաց իւրոց. և սպառնասցի անհաւատիցն ։ 15 *Զի ահաւասիկ Տր̃ իբրև զհուր եկեսցէ. և կառք նր̃ իբրև զմրրիկ՝ հատուցանել սրտմտութբ̃ զհատուցումն իւր. և բոցով 16 հրոյ զպարհամարհանս իւր ։ *Զի 'ի հուր Տն̃ դատեսցի ա̃մ երկիր. և 'ի սուր նորա ա̃մ մարմին ։ բազումք եղիցին վիրաւորք 'ի Տէ̃ ։ 17 *Որք սրբեն՝ և մաքրեն 'ի պարտէզս՝ և 'ի սրահս իւրեանց. որք ուտեն զմիս խոզենի՝ և զզազրելիսն՝ և զմուկն՝ 'ի միասին սատակեսցին նոքա՝ ասէ Տր̃ ։ 18 *Եւ ես զգործս նց̃ և զխորհուրդս նոցա գիտեմ. գամ ժողովել զա̃մ ազգս՝ և զլեզուս. եկեսցեն՝ և տեսցեն զփառս իմ ։ 19 *Եւ թողից 'ի վ̃ր նոցա նշան. և առաքեցից 'ի նոցանէ փրկեալս յազգս. 'ի Թարսիս. և 'ի Փուդ. և 'ի Լուդ. և 'ի Մոսոք. և 'ի Թոբէլ. և յԵլլադայ. և 'ի կղզիս հեռաւորս. որոց չիցէ լուեալ զանուն իմ. և ոչ տեսեալ զփառս իմ ։ և պատմեսցեն զփառս իմ և զանուն իմ 'ի մէջ ազգաց ։ 20 *Եւ ածցեն զեղբարս իւրյ̃ յա̃մ ազգաց պատարագ Տն̃. հեծեալս կառօք՝ հանդերձ պալարակապ երիվարօք և հովանոցօք 'ի սբ̃ քաղաքն Եմ̃, ասէ Տր̃ ։ որպս̃ մատուցին որդիքն Իղի զպատարագս իւրեանց ինձ սաղմոսիւք 'ի տան Տն̃ ։ 21 *Եւ 'ի նոցանէ առից ինձ 'ի քահանայս՝ և 'ի ղևտացիս՝ ասէ Տր̃ ։ 22 *‖ Զոր օրինակ երկինք նոր՝ և երկիր նոր՝ զոր ես առնեմ կալ առաջի իմ. ասէ Տր̃. նոյնպէս կացցէ զաւակն ձեր ։ 23 *Եւ եղիցի ամիս յամսոյ՝ և շաբաթ 'ի շաբաթէ. եկեսցէ ա̃մ մարմին երկիր պագանել առաջի իմ յԵմ̃՝ ասէ Տր̃ Ա̃ծ ։ 24 *Եւ ելցեն՝ և տեսցեն զոսկերս մարդկան առնա յանցուցելոց ։ ‖ զի որդն նց̃ ոչ վախճանեսցի. և հուր նոցա ոչ շիջցի ։ և եղիցին 'ի տեսիլ ա̃մ մարմնեղեաց ։

Margin notes: ‖ Ղուկ. 1.24. Երեմ. 7.13. Վեր. 65.12. — զեղբարս ձեր յա̃մ — ‖ Յայտն. 21.1. — ‖ Մարկ. 9.43.



Եւ ասէ ցիս Տր․ զի՞նչ տեսանես Երեմիա, և ասեմ, կաթսայ յեռանդեան տեսանեմ․ Երեմ․1․13․



Եւ առին զԵրեմիա, և ընկեցին զնա ՚ի գուբն Մելքեայ․ և ո՛չ էր անդ ջուր, այլ տիղմ․ Երեմ․38․6․

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՐԵՄԻԱՅԻ։

## Գլուխ Առաջներորդ։

1 ՊԱՏԳԱՄ ԱՍՏՈՒԾՈՅ․ որ եղև ՚ի վ(եր)այ Երեմիայի․ Քեղկեայ՝ ՚ի քահանայից անատի՝ որք բնակեալ էին յԱնաթովթ յերկրին Բենիամինի։ 2 *Ու որ եղև բան Տն յաւուրս յօսիայ որդւոյ ամոնայ՝ արքային Հրէաստանի․ յերեքտասաներորդի ամի թագաւորութեն նր։ 3 *Եւ եղև յաւուրս յովակիմայ որդւոյ յօսիայ՝ արքային Հրէաստանի․ մինչև ՚ի վախճան մետասաներորդի ամին սեդեկիայ որդւոյ յօսիայ արքային յուդայ՝ ցգերութիւն Եճմի․ յամսեանն հինգերորդի։ 4 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 5 *Մինչ չև ստեղծեալ էր զքեզ յորովայնի, գիտեմ զքեզ․ և մինչև ելեալ էիր յարգանդէ, սրբեցի զքեզ․ մարգարէ ՚ի հեթանոսս եդի զքեզ։ 6 *Եւ ասեմ՝ որ եսդ Տր Տր․ ահաւասիկ խօսիլ իսկ ո՛չ գիտեմ․ զի մանուկ եմ ես։ 7 *Եւ ասէ ցիս Տր․ մի՛ ասեր թէ մանուկ եմ ես․ զի առ ամենեսեան՝ առ որս առաքեցից զքեզ՝ երթիցես․ և ըստ ամ՛ զոր միանգամ պատուիրեցից քեզ՝ խօսեսցիս։ 8 *Մի՛ երկիցես յերեսաց նց՝ զի ես ընդ քեզ եմ ՚ի փրկել զքեզ՝ ասէ Տր։ 9 *Եւ ձգեաց Տր զձեռն իւր առ իս՝ և մերձեցոյց ՚ի բերան իմ․ և ասէ ցիս․ ահա ետու զբանս իմ ՚ի բերան քո։ 10 *Ահա կացուցի զքեզ այսօր ՚ի վ(եր)այ ազգաց՝ և թագաւորութեանց։ ‖ խլել՝ և քրել․ կորուսանել․ և յատակել․ և շինել և տնկել։ 11 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ․ զի՞նչ տեսանես Երեմիա․ և ասեմ՝ գաւազան ընկուզի տեսանեմ ես։ 12 *Եւ ասէ ցիս Տր․ բարւոք տեսաներ․ զի զարթուցեալ եմ ՚ի բանս իմ

‖ Մտ․ 18․7․

իմ առնել զնա։ *Եւ եղև բան Տն առ իս կրկին անգամ՝ և ասէ զի՞նչ տեսանես. և ասեմ. կաթսայ յեռանդան տեսանեմ. և երեսք նր յերեսաց հիւսիսոյ։ 13

*Եւ ասէ ցիս Տէր. յերեսաց հիւսիսոյ բորբոքեսցին չարիք ՚ի վերայ բնակչաց երկրի։ 14

*Զի ահաւասիկ ես միախուռն կոչեցից զամ թագաւորութիւնս թագաւորութեանց ՚ի հիւսիսոյ երկրէ՝ ասէ Տր. եկեսցեն, և արկցեն իւրաքանչիւր զաթոռ ՚ի վերայ սեմոց դրանցն եմի. և ՚ի վր ամ պարսպաց նր շուրջանակի. և ՚ի վր ամ քաղաքացն հրէաստանի։ 15

*Եւ խօսեցայց դատաստանաւ ընդ նոսա վս ամ չարեաց իւրեանց. զի թողին զիս, և զոհեցին աստուծոց օտարաց՝ և երկիր պագին գործոց ձեռաց իւրեանց։ 16

*Եւ դու պնտեա զմէջ քո, արի, և ասա նց, զամ զոր միանգամ պատուիրեմ քեզ. մի երկիցես յերեսաց նոցա և մի զանգիտիցես առաջի նց. զի ընդ քեզ եմ ես՝ ՚ի փրկել զքեզ՝ ասէ Տր։ 17

*Բայց ես ահաւադիկ եդի զքեզ այսօր իբրև զքաղաք ամուր. և իբրև զսիւն երկաթի՝ և իբրև զպարիսպ պղնձի ամուր՝ ամ թագաւորաց հրէաստանի և իշխանաց նց. և քահանայից նոցա. և ժողովրդեան երկրին։ 18

*Եւ մարտիցեն ընդ քեզ՝ և քեզ ինչ ոչ կարասցեն առնել. զի ես ընդ քեզ եմ ՚ի փրկել զքեզ ասէ Տր։ 19

## ԳԼ: Բ.

Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 1

*Երթ՝ և ընթերցիր յականջս որդւոցն եմի՝ և ասասցես. այսպէս ասէ Տր՝ յիշեցի զքեզ՝ և զգութ մանկութե քոյ. և զսէր կատարման քոյ՝ ՚ի գալ քեզ զհետ սրբոյն իէլի՝ ասէ Տր։ 2

*Սրբն իէլի. Տն է սկիզբն արմտեաց նորա. ամենեքին որք ուտիցեն զնա. զղջասցին. չարիք հասցեն ՚ի վր նոցա՝ ասէ Տր։ 3

*Լուարուք զբան Տն տունդ յակոբայ՝ և ամ ազգ տանդ իսրայէլի։ 4

*Այսպէս ասէ Տր. զի՞նչ գտին հարքն ձեր, զի հեռացան յինէն՝ և գնացին զհետ սնոտեացն. և սնոտիք եղեն։ 5

*Եւ ոչ ասացին՝ ո՞ւր է Տր. որ եհան զմեզ յերկրէն եգիպտացւոց. որ առաջնորդեաց մեզ յանապատն անբաւ՝ և յանկոխ՝ և յանջուր՝ և յանպտուղ երկրի. և ՚ի ստուերս մահու. յերկիր՝ ուր ոչ էանց մարդ. և ոչ բնակեաց ՚ի նմա որդի մարդոյ։ 6

*Եւ տարայ զմեզ ՚ի քարմէլ. ուտել զպտուղ նր՝ և զբարութիւն. և մտէք՝ և պղծեցէք զերկիրն իմ. և զժառանգութիւն 7

իմ

8 իմ եդիք ՚ի պղծութիւն։ *Եւ քահանայքն ոչ ասացին՝ ո՞ւր է Տր. և վերակացուք օրինաց իմոց ոչ ծանեան զիս. և հովիւքն ամպարշտեցան յիս. և մարգարէքն մարգարէանային բահաղու. և զկնի անշահիցն երթային։

9 *Վասն այնորիկ տակաւին դատեցայց ընդ ձեզ՝ ասէ Տր. և ընդ որդիս որդւոց ձերոց դատեցայց։

10 *Արդ անցէք ընդ կղզիս քետիմացւոց, և տեսէք. և ՚ի կեդար առաքեցէք՝ և խելամուտ եղերուք յոյժ. և տեսէք, թէ եղև այսպիսի ինչ։

11 *Եթէ փոխեցին ազգքն զաստուածս իւրեանց. և նոքա ոչ են աստուածք. և ժողովուրդ իմ փոխեաց զփառս իւր. ուստի ոչ օգտիցին։

12 *Յիմարեցան երկինք՝ վս այսորիկ և սոսկացան յոյժ՝ ասէ Տէր։

13 *Զի երկուս չարիս գործեաց ժողովուրդն իմ. զիս թողին զաղբիւր ջուրց կենաց. և փորեցին իւրեանց գուբս. գուբս ծակոտս՝ որք ոչ կարիցեն ունել զջուր։

14 *Միթէ ծառա՞յ իցէ իէլ. կամ ստրուկ՝ զի եղեն յաւար։

15 *՚Ի վր նր գոչեցին առիւծք. և ետուն զձայնս իւրեանց. որք արարին զերկիր նր յաւերակ. և քաղաքք նր կործանեցան՝ առ ՚ի չգոյէ բնակչաց։

16 *Եւ որդիքն մեմփացւոց և տափնացւոց ծանեան զքեզ՝ և այպանեցին։

17 *Ո՞չ ապաքէն թողուլն զիս արար քեզ զայն՝ ասէ Տր Ած քո. ՚ի ժամանակի ածելոյն զքեզ ընդ ճանապարհն։

18 *Եւ արդ զի՞նչ կայ քո՝ և ճանապարհին եգիպտացւոց ըմպել քեզ զջուրն գեհոնայ. և զի՞ կայ քո և ճանապարհին ասորեստանեայց ըմպել զջուր գետոց։

19 *Խրատեսցէ զքեզ ապստամբութիւն քո. և չարիք քո կշտամբեսցեն զքեզ. և ծիցես, և տեսցես թէ չար և դառն է քեզ թողուլն զիս՝ ասէ Տր Ած քո. և ոչ հաճեցայ ընդ քեզ՝ ասէ Տր Ած քո։

20 *Զի յաւիտենից խորտակեցեր զլուծն քո. և խզեցեր դու զկապանս քո. և ասացեր՝ թէ ոչ ծառայեցից. այլ երթայց ՚ի վերայ ամ բլրոց բարձանց. և ՚ի ներքոյ ամ հովանաւոր ծառոց՝ անդ շուայտեցայց պոռնկութբ։

21 *Եւ ես տնկեցի զքեզ որթ պտղաբեր ամենևին ճշմարիտ. զիա՞րդ դարձար ինձ ՚ի դառնութիւն

22 որթդ օտարացեալ։ *Եւ եթէ լուասցիս բորակաւ. և յաճախեսցես քեզ օճառ. սակայն ծրդեալ կաս յանօրէնութիս քո առաջի իմ՝ ասէ Տր Տր։

23 *Զիա՞րդ ասիցես, թէ ոչ պղծեցայ. և զհետ բահաղու ոչ գնացի. տես զճանապարհս քո ՚ի գերեզմանս. և ծանի՛ր

24 զինչ գործեցեր։ *Ընդ երեկոյս ձայն

լալոյ նորա դուժեաց 'ի ձմնապարհս իւր. յաձախեաց 'իջուրս անապատի ըստ ցանկութե անձին իւրոյ. այսա֊ քեկ լինէր՝ մատնեցաւ, և ո՛ դարձուս֊ ցէ զնա. ամենեքեան որք խնդրեսցեն զնա, ոչ աշխատեսցին. 'ի տառապանս նորա գտցեն զնա ։ 25 * Դարձո՛ զոտս քո 'ի խիստ ճանապարհէ. և զկոկորդ քո 'ի ծարաւոյ. և նա ասէ՝ կարող եմ. քանզի սիրեր զօտարոտիս՝ և երթայր զհետ նոցա։ 26 * Որպէս ամաչեսցէ գող՝ յոր ժամ ըմբռնեսցի. այնպէս ամաչեսցեն որդիքն ի՟էլի, ինքեանք, և թագաւորք իւրեանց. և իշխանք իւրեանց՝ քահանայք իւրեանց՝ և մարգարէք իւրեանց։ 27 * Ցփայտն ասացին՝ թէ հայր իմ ես. և քարին՝ թէ դու ծնար զիս. և դար ձուցին յիս զթիկունս, և ոչ զերեսս իւր եանց։ և 'ի ժամանակի չարեաց իւրեանց ասասցեն, արի՛ և փրկեա՛ զմեզ։ 28 * Եւ ո՞ւր են աստուածք քո՝ զորս արարեր քեզ. յարիցեն, և փրկեսցեն զքեզ 'ի ժամանակի չարեաց քոց. զի ըստ թուոյ քաղաքացն քոց էին քեզ աստուածք քո յուդա. և ըստ թուոյ անցիցն եր֊ մի զոհէին բահաղու։ 29 * Ընդ էր խօ սիք ընդ իս. զի ամենեքեան դուք ամ֊ պարշտեցայք. և ամենեքեան դուք ա֊ նօրինեցայք յիս՝ ասէ Տր ։ 30 * Զուր հա րի զորդիսն ձեր. և զխրատ դուք ո՛չ ընկալայք. սուր եկեր զմարգարէսն ձեր. իբրև զառիւծ սատակիչ. և ո՛չ զարհուրեցայք։ 31 * Լուարո՛ւք զպատ֊ գամ Տն. այսպէս ասէ Տր. միթէ անա֊ պա՞տ եղէ տունդ ի՟էլի. կամ աւե՞ր եր֊ կիր խոպանացեալ. զի ասաց ժողո֊ վուրդ իմ. անտերունչք շրջիցուք՝ և առ քեզ ո՛չ եկեսցուք։ 32 * Միթէ մո֊ ռասցի՞ հարսն զզարդ իւր. և կոյս ըզ լանջազեղ կամար իւր. բայց ժողո֊ վուրդ իմ մոռացաւ զիս զաւուրս ան֊ թիւս։ 33 * Զի՞նչ ևս բարիս հնարեսցիս 'ի ճանապարհս քո խնդրել զհաշտու֊ թի. ոչ այդպէս, այլ դու ևս անզգամեցար պղծել զճանապարհս քո։ 34 * Եւ 'ի ձեռս քո գտաւ արիւն անձանց անմեղաց. ոչ 'ի վիհս գտի զնոսա. այլ առ ամ կաղնեօք։ 35 * Եւ ասացեր թէ անմեղ եմ. դարձցի սրտմտութի նր յինէն. ահաւասիկ ես դատեցից ընդ քեզ. զի ասացեր թէ՝ ոչ մեղայ։ 36 * Զի արհամարհեցեր յոյժ կրկնել զճանապարհս քո։ և յեգիպտոսէ ամա չեսցես՝ որպէս ամաչեցերն յասորեստան֊ ւոյն։ 37 * Զի և անտի ևս ձեռս 'ի գլուխ ելցես. զի մերժեաց Տր զյոյսն քո. և ո՛չ ևս յաջողեսցիս 'ի նմա։

Գ Լ: Գ.

1 Եթէ արձակեսցէ այր զկին իւր՝ և գնասցէ 'ի նմանէ՝ և լինիցի առն այլում. եթէ դառնալով դարձցի անդ րէն 'ի նոյն. ո՞չ ապաքէն պղծելով պղծեսցի կինն այն. և դու պոռնկեցար ընդ հովիւս բազումս. և ո՛չ դարձար 2 առ իս՝ ասէ Տր։ * Ամբա՛րձ զաչս քո յուղղութի՛ և տե՛ս. ո՞ւր ոչ թաթաւե ցար 'ի ճանապարհս քո. նստար դու նոց իբրև ագռաւ միայնացեալ թափուր. և պղծեցեր զերկիր պոռնկութ քով 3 և չարեօք քովք ։ * Եւ ստացար հո֊ վիւս բազումս 'ի գայթագղութի քեզ. երեսք կնոջ պոռնկի եղեն քո. անա֊ 4 մօթացար առ ամենեսեան ։ * Ո՛չ իբրև զտուն կոչեցեր զիս. և հայր և իշխան 5 կուսութե քում։ * Մի թէ յաւիտեան կայցէ բարկութիւն քո. կամ իսպառ պահեսցի. ահա խօսեցար՝ և արարեր զայդ ամենայն չարիս՝ և զօրացար։ 6 * Եւ ասէ ցիս Տր յաւուրս յովսիայ ար քայի. տեսե՞ր զինչ գործեաց բնա֊ կիչն ի՟էլի. գնաց առանձինն 'ի վերայ ամ լերանց բարձանց. և 'ի ներքոյ ամ անտառախիտ ծառոց. և անդ պոռնկե 7 ցաւ ։ * Եւ ասացի յետ այնչափ պոռն կութե նր. դա՛րձ առ իս՝ և ո՛չ դարձաւ. և ետես պղծութի ուխտադրուժն 8 յուդա։ * Եւ տեսի՝ թէ յաղագս որովք շնացաւ բնակիչն ի՟էլի, ըմբռնեցաւ. արձակեցի զնա՝ և ետու նմա թուղթ ապահարզանի 'ի ձեռս նր. և ո՛չ զար֊ հուրեցաւ ուխտադրուժն յուդա քոյր նորա. այլ գնաց, և պոռնկեցաւ և նա։ 9 * Եւ եղև յոչինչ պոռնկութի նորա. և շաղախեր զերկիրն. զի շնայր ընդ քա 10 րի՝ և ընդ փայտի։ * Եւ 'ի վերայ այսր ամի ո՛չ դարձաւ առ իս ուխտադրուժ քոյրն նորա յուդա՝ յամ սրտէ իւրմէ, 11 այլ ստութբ՝ ասէ Տր։ * Եւ ասէ ցիս Տր՝ արդարացոյց զանձն իւր ապստամ բութին ի՟էլի առ ուխտազանցութբն 12 յուդայ ։ * Երթ երթ՝ և ընթերցի՛ր զպատգամս զայս 'ի կողմանս հիւսի֊ սոյ. և ասասցես, դա՛րձ առ իս բնա֊ կիչդ ի՟էլի՝ ասէ Տր. և ո՛չ հաստատեցից զերեսս իմ 'ի վերայ ձեր. զի ողորմած եմ ես՝ ասէ Տր. և ո՛չ պահեցից ձեզ 13 ոխս յաւիտեան ։ * Բայց ծանի՛ր զա֊ նիրաւութիս քո. զի 'ի Տր Այ քո ամ֊ բարշտեցար. և տարածեցեր զճանա֊ պարհս քո օտարաց 'ի ներքոյ ամ ան֊ տառախիտ փայտից. և ձայնի իմում 14 ո՛չ լուա՛ր՝ ասէ Տր։ * Դարձարո՛ւք որ֊ դիք հեռացեալք՝ ասէ Տր՝ զի ես տիրե՛ ցից ձեզ. և առից զձեզ մի՛ 'ի քաղաքէ՝ և

Ա Մ այր. 32. 33.

Ա Մ այր. 11. 13.

ապականօղ

Ա Մ էր. 2. 10.

և երկուս յազգէ. և տարայց զձեզ 'ի Սիոն։ *Եւ տաց ձեզ հովիւս ըստ սրտի իմում. և հովուելով հովուեսցեն զձեզ իմաստութեամբ։ 15

*Եւ եղիցի, եթէ բազմանայցէք՝ և աճիցէք 'ի վերայ երկրի յաւուրս յայնոսիկ՝ ասէ Տր̃. ոչ ևս ասասցեն՝ տապանակ կտակարանաց սրբոյն Իսրայէլի. և ոչ անկանիցի 'ի սիրտ. և ոչ անուանեսցի 'ի նմա. և ոչևս խնդրեսցի. ոչ գործեսցի յաւուրս յայնոսիկ։ 16

*Եւ 'ի ժամանակին յայնմիկ կոչեսցեն զե̃մ աթոռ Տն̃. և ժողովեսցին ա̃մ ազգք յանուն Տն̃ յե̃մ. և ոչևս գնայցեն զհետ խորհրդոց սրտից իւրեանց չարաց։ 17

*Յաւուրսն յայնոսիկ ժողովեսցին տունն յուդայ առ տունն Իղի. և եկեսցեն 'ի միասին 'ի հիւսիսոյ՝ և յա̃մ գաւառաց յերկիրն, յորում ժառանգեցուցից զհարսն նոցա։ 18

*Եւ ասեմ, (եղիցի Տր̃.) զի կարգեցից զձեզ յորդիս. և տաց ձեզ զերկիրն ընտիր. ժառանգութի անուանի Այ̃ ամենակալի ազգաց. և ասացի՝ թէ հայր կոչեսցես զիս. և ոչևս դառնայցես յինէն։ 19

*Բայց որպ̃ անգոսնեսցէ կին զհոմանի իւր. այնպէս անգոսնեաց զիս տունն Իղի՝ ասէ Տր̃։ 20

*Ձայն 'ի շրթանց գուժեաց լալեան՝ և պաղատանաց որդւոյն Իղի. զի անիրաւեցան 'ի ճանապարհս իւրեանց։ 21

*Դարձարուք որդիք. դարձջիք, և ես բժշկեցից զբեկումն ձեր. և ասացին. ահաւասիկ կամք. զի դու ես Տր̃ Այ̃ մեր։ 22

*Արդարև սուտ իսկ էին բլուրքն և զօրութիւնք լերանց. բայց 'ի ձեռն Տն̃ Այ̃ մերոյ է փրկութի տանն Իղի։ 23

*Եւ ամօթ մաշեաց զվաստակս հարցն մերոց 'ի մանկութե իւրեանց. զխաշինս նոցա՝ և զանդեայս՝ և զուստերս և զդստերս իւրեանց։ 24

*Ննջեցաք ամօթով մերով՝ և ծածկեցին զմեզ անարգանք մեր. քանզի առաջի Այ̃ մերոյ մեղաք մեք՝ և հարքն մեր՝ 'ի մանկութե մերմէ մինչև ցայսօր. և ոչ լուաք ձայնի Տն̃ Այ̃ մերոյ։ 25

## ԳԼ. Դ.

Եթէ դարձցի առ իս Իղ՝ ասէ Տր̃. դարձցի. և եթէ ընկեսցէ զգարշելիս իւր 'ի բերանոյ իւրմէ. (վս̃ Այ̃ յերուսաղեմ.) և յերեսաց իմոց երկիցէ։ 1

*Եւ երդնուցու՝ եթէ կենդանի է Տր̃. ճշմարտութբ և իրաւամբք՝ և արդարութբ, օրհնեսցին նովաւ ազգք. և նովին գովեսցին։ 2

*Զի այսպ̃ ասէ Տր̃ ցարսդ յուդայ և ցբնակիչսդ եմի. ‖ հերկեցէք ձեզ հերկս. և մի սերմանէք 'ի վր̃ փշոց։ 3

‖ Ովսէ. 10. 12.

*Թլփատեցարուք Այ̃ ձերում. և թլփատեցէք զանթլփատութի սրտից ձերոց, արք յուդայ և բնակիչք եմի. գուցէ ելանիցէ իբրև րզ հուր սրտմտութի իմ. բորբոքեսցի, և ոչոք իցէ՝ որ շիջուցանիցէ յերեսաց չարաց գործոց ձերոց։ 4

5 *Պատմ տուք 'ի հրէաստան. լու լիցի յեմ. և ասացէք՝ փող հարէք 'ի վերայ երկրին. զաղաղակ բարձէք. գոչէք. ժողովեցարուք՝ և մտցուք 'ի քաղաքս պարսպաորս։

6 *Առէք՝ փախերուք 'ի Սիոն. փութացարուք՝ մի կայք. ‖ զի ածից ես զչարիս 'ի հիւսիսոյ. և բեկումն մեծ։

‖ Եր. 1. 13.

7 *Ել առիւծ 'ի մորւոյ իւրմէ սատակել զազգս. խաղաց՝ և ել 'ի տեղւոջէ իւրմէ՝ առնել զերկիր քո աւերակ. և քաղաքք քո քակտեսցին՝ առ 'ի չգոյէ բնակչաց 'ի նոսա։

8 *'Ի վերայ այդորիկ քրձազգածք եղերուք՝ կոծեցարուք. ճիչ բարձէք. զի ոչ դարձաւ սրտմտութի բարկութե Տն̃ 'ի ձէնջ։

9 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր̃. կորիցէ սիրտ թագաւորին՝ և սիրտ իշխանացն. քահանայքն յիմարեսցին. և մարգարէքն զարմասցին։

10 *Եւ ասեմ. ո՛ Տր̃ Տր̃՝ բաղխելով ուրեմն խաբեցեր զժողովուրդն զայն՝ և զեմ. զի ասացեր թէ խաղաղութի եղիցի ձեզ. և հասանիցէ սուր մինչև յանձինս նոցա։

խաբելով ուրեմն

11 *'Ի ժամանակին յայնմիկ ասասցեն ցժողովուրդդ ցայդ՝ և ցեմ. այս մոլորութե, յանապատի 'ի ճանապարհ դստեր ժողովրդեան իմոյ՝ ոչ 'ի մաքրութի՝ և ոչ 'ի սրբութի։

12 *Ոգի լրութե 'ի նոցանէ եկեսցէ ինձ. այսուհետև ես խօսեցայց ը̃նդ նս̃ դատաստանօք իմովք։

13 *Ահա իբրև զամպ ելցէ՝ և իբրև ըզմրրիկ կառք նր̃. արագագոյն քան զարծուիս երիվարք նր̃. վա՜յ մեզ՝ զի չուառեցաք։

14 *Լուա՛ 'ի չարեաց զսիրտ քո եմ՝ զի ապրեսցիս. մինչև ցերբ գտանիցին 'ի քեզ խորհուրդք ցաւոց քոց։

15 *Զի ձայն գուժկանի 'ի դանայ. և լուիցին ցաւք 'ի լեռնէ եփրեմի։

16 *Յուշ արարէք զայս ազգաց. ահաւադիկ հասեալ են յեմ. պատմեցէք՝ թէ գունդք գան յերկրէ հեռաստանէ. ձայն ետուն 'ի քաղաքս հրէաստանի։

17 *Իբրև պահապանք ագարակի շուրջ պատեցան զնովաւ. զի անփոյթ արարեր զինէն՝ ասէ Տր̃։

18 *‖ Ճանապարհք քո և գնացք քո արարին քեզ զայդ ա̃մ. այդ իսկ է չարութի քո՝ և դառնութի. զի եհաս 'ի սրտի քում։

‖ Իմաստ. 1. 3. և 5.

19 *Որովայն իմ. որովայն իմ ցաւի. և զգայականք սրտի իմոյ հեծեն. սիրտ իմ դեղանի. և անձն իմ ոչ դադարեսցէ. զի զձայն փողոյ լուաւ անձն իմ. զգոյժ պատե_

20 բազմի. և զչքնաղութիւն: *Բեկումն 'ի վերայ բեկման. բողոք բարձէք. զի թշուառացաւ ամ երկիր. յանկարծակի թշուառացաւ խորանն. և քակտեցան փեղկքն խորանի իմոյ: 21 *Մինչև յե՞րբ տեսանիցեմ փախստականս. լսիցեմ զձայն փողոյ: 22 *Զի իշխանք ժողովրդեան իմոյ զիս ոչ ծանեան. զի որդիք անմիտք են, և ոչ հանճարեղք. իմաստունք են 'ի չար գործել. և զբարին առնել ոչ գիտացին: 23 *Հայեցայ յերկիր՝ և ահա թափուր և ոչինչ գոյր. և յերկինս՝ և ոչ էր լոյս նոցա: 24 *Տեսի զլերինս՝ և կային յերերի. և զամենայն բլուրս խռովեալս: 25 *Հայեցայ, և ահա ոչ գոյր մարդ. և ամ թռչունք երկնից սարսեցան: 26 *Տեսի՝ և ահա աւերակ էր կարմեղոս. և ամ քաղաքք նորա հրձիգք յերեսաց Տն. և յերեսաց բարկութե սրտմտութե նր ապականեցին: 27 *Այսպէս ասէ Տր. աւերեսցի երկիր ամ. և վախճան ոչ արարից: 28 *'Ի վերայ այսր ամի սուգ առցէ երկիր՝ և խաւարեսցին երկինք 'ի վերուստ: զի խօսեցայ, և ոչ զղջացայ. դիմեցի՝ և ոչ դարձայց 'ի նմանէ: 29 *'Ի ձայնէ հեծելոյ և 'ի կրկալէ աղեղանց խուսեաց աշխարհն ամ. և սորեցին յայրս. և թաքեան յանտառս. և ելին 'ի քարանձաւս. ամ քաղաքք լքան՝ և ոչ բնակէր 'ի նոսա մարդ: 30 *Եւ դու զի՞ գործեսցես թշուառական. եթէ կարմիր զգեցցիս. և զարդու ոսկւոյ զարդարեսցիս. և ածիցես ծարիր յաչս քո. 'ի զուր են զարդարանքն քո. մերժեցին զքեզ հոմանիքն քո. և խնդրեն զանձն քո: 31 *Զի զձայն իբրև զերկանց անդրանկածնի լուայ զհեծութե քոյ. ձայն դստեր սիոնի մեղկասցի. և լքցէ զձեռս իւր. վա՜յ ինձ, զի պակասեաց անձն իմ 'ի վերայ սպանելոցն:

## ԳԼ: Ե:

1 Ընթացարո՛ւք յայսկոյս՝ յայնկոյս՝ ընդ ճանապարհսն եէմի. և տեսէ՛ք և ծաներո՛ւք. և խնդրեցէք 'ի հրապարակս նր. եթէ գտանիցէք այր մի որ առնիցէ իրաւունս. և խնդրիցէ հաւատս. և եղէց նոցա քաւիչ՝ ասէ Տր: 2 *Եթէ ասիցեն կենդանի է Տր. թէ պէտ և սուտ խոկ երդնուցուն: 3 *Տր աչք քո 'ի հաւատս. տանջեցեր զնս. և նոցա ոչ ցաւեցաւ. վախճանեցեր զնոսա. և ոչ կամեցան ընդունիլ զխրատ. կարծրացուցին զերեսս իւրեանց քան զվէմ. և ոչ կամեցան դառնալ: 4 *Եւ ասացի՝ թերևս աղքատք իցեն. վն այսորիկ ոչ կարացին իմանալ զճանապարհս Տն.

2. Եբ. Եւ ասիցեն, կենդանի է տր, այսու և սուտ խոկ երդնուն

5 և զիրաւունս Այ: *Երթայց առ հաւատս՝ և խօսեցայց ընդ նոսա. թէ նոքա գիտասցեն զճանապարհս Տն և զիրաւունս Այ. և նոքա աւանիկ առհասարակ խորտակեցին զլուծն. և խզեցին զսամետս: 6 *Վն այնորիկ եհար զնոսա առիւծ յանտառէ. և գայլ մինչև 'ի տունս նոցա սատակեաց զնոսա. զարթեաւ ինձ 'ի վր քաղաքաց նց. և ամենեքին որք ելանիցեն 'ի նոցանէն՝ անկցին ընդ. զի յաճախեցին զամպարշտութիւնս իւրեանց. զօրացան յապստամբութեան իւրեանց: 7 *Որո՞վ այսոքիւք հաշտեցայց ընդ քեզ: որդիքն քո թողին զիս՝ և երդնուին 'ի չաստուածսն. յագեցուցի զնս՝ և շնային. և 'ի պոռնկոց օթեվանս առնէին: 8 *Ձիք մատակախաղք եղեն. իւրաքանչիւր 'ի կին ընկերի իւրոյ վրնջէին: 9 *Միթէ 'ի վր այսր ամի ոչ առնիցեմ այցելութի ասէ Տր. կամ յազգէ այնպիսւոյ 10 ոչ խնդրիցէ վրէժ անձն իմ: *Ելէք 'ի մարտկոցս նր՝ և կործանեցէք. բայց վախճան մի առնիցէք: թողէք զհիմունս նր, զի Տն են: 11 *Զի արհամարհելով արհամարհեցին զիս տունն իէլի 12 և տունն յուդայ՝ ասէ Տր: *Ստեցին Տն իւրեանց. և ասեն՝ ոչինչ է այդ. և ոչ եկեսցեն 'ի վր մեր չարիք. և զսուր 13 և զսով ոչ տեսցուք: *Մարգարէքն մեր էին 'ի հողմ. և բան Տն ոչ գոյր 'ի 14 նոսա. այնպէս եղիցի նց: *Վն այդորիկ այսպէս ասէ Տր Այ ամենակալ. փոխանակ զի խօսեցայք զբանդ զայդ: ահաւասիկ ես ետու զբանս իմ 'ի բերան քո հուր. և զժողովուրդն զայն փայտ. և կերիցէ զնս: 15 *Զի ահաւասիկ ես ածից 'ի վր ձեր ազգ 'ի հեռաստանէ տունդ իէլի՝ ասէ Տր. ազգ որ առաջին. ազգ որ յաւիտենից. ազգ որոյ ոչ լսիցես զլեզու նր. և ոչ իմա_ 16 նայցես զխօսս նր: *Կապարճք նորա իբրև զգերեզմանս բաց են. ամենեքին 17 զօրաւորք: *Եւ կերիցեն զհունձս ձեր՝ և զհաց. և կերիցեն զուստերս՝ և զդստերս ձեր. և կերիցեն զոչխար՝ և զարջառ ձեր. և կերիցեն զայգիս, և զթզենիս ձեր. և զձիթենիս ձեր: և կասցեն զամուր ամուր քաղաքս ձեր. յոր դուք պանծացեալ էք՝ սրով սա_ 18 տակեսցեն: *Եւ եղիցի յաւուր յայնմիկ ասէ Տր Այ քո. ոչ արարից զձեզ 19 'ի վախճան: *Եւ եղիցի յորժամ ասիցէք՝ վն էր արար Տր Այ մեր մեզ զայս ամ: ասասցես ցնոսա. փոխանակ զի թողէք զիս՝ և ծառայեցէք աստուծոց օտարաց յերկրի ձերում. նոյնպէս ծառայեսջիք օտարաց յերկրի՝ որ ոչ ձեր

Եբր. նոքա

Եզեկ. 22.11.

16. 10

ձեր իցէ։ * Պատմեցէք զայդ 'ի տունն 20
յակովբայ. և լսելի լիցի 'ի տունն յու_
դայ. և ասասցէք։ * Լուարուք զայս ժո 21
ղովուրդ յիմար՝ և անմիտ. որոց աչք
են, և ոչ տեսանեն. և ականջք՝ և ոչ
լսեն։ * Եթէ յինէն ոչ երկնչիջիք՝ ասէ 22
Տր. կամ յերեսաց իմոց ոչ սարսիցիք.
որ կարգեցի զաւազ սահման ծովու.
հրաման յաւիտենական՝ և ոչ անցանէ
զնովաւ. խռովեսցի՝ և ոչ կարասցէ.
գոչեսցեն ալիք նր՝ և ոչ անցցեն զնո_
վաւ։ * Այլ ժողովրդեանս այսորիկ 23
եղև սիրտ անհնազանդ՝ և անհանճար.
թիւրեցան՝ և անցին՝ գնացին։ * Այլ 24
ոչ ասացին 'ի սիրտս իւրեանց. երկի_
ցուք 'ի Տէ Այ մերմէ. որ տայ մեզ
զանձրև զկանուխ և զանագան, ըստ
ժամանակի լրութե հրամանի հնձոց.
և պարհեսցէ զմեզ։ * Անօրէնութիք 25
մեր վրիպեցուցին զայն. և մեղք մեր
մերժեցին զբարութիս 'ի մէնջ։
* Զի գտան 'ի մէջ ժողովրդեան իմոյ 26
ամպարիշտք. և որոգայթս իբրև ըղ
վարմս հաւորսաց կանգնեցին ապա_
կանել զմարդիկ։ * Այլ ըմբռնեին 27
իբրև զորոգայթս անկեալ լի թռչ_
նովք. այնպէս լի են տունք նց նենգու
թբ. վն այնորիկ ստացան՝ և մե_
ծացան։ * Գիրացան՝ և պարարտա_ 28
ցան. և անցին զբանիւք իմովք 'ի չա_
րութի. ‖ դատաստան արդար ոչ դա_
տեցան. զիրաւունս որբոյն ոչ իրաւա
ցուցին. և զդատաստան այրւոյն ոչ
դատեցին։ * Միթէ 'ի վն այսր իրի 29
ոչ առնիցեմ այցելութի ասէ Տր. կամ
յազգէ յայնպիսւոյ ոչ խնդրեսցէ ըղ
վրէժ անձն իմ։ * Յիմարութիք՝ և ար 30
հաւիրք եղեն 'ի վր երկրի։ * Մարգա 31
րէք սուտ մարգարէանան. և քահա_
նայք ծափ հարկանեն նոցա. և ժողո
վուրդ իմ սիրեաց զայն. և զի՞նչ գոր
ծիցէք առ յապայ։

‖ Եսայ. 1.23. Զաքա. 7.10.

## ԳԼ. Զ.

Զօրացարուք որդիք բենիամինի. 1
'ի մէջ երէմի փող հարէք. 'ի թե
կուէ և 'ի վերայ բեթաքարմայ առէք
նշան. զի չարիք կարկառեալք գան 'ի
հիւսիսոյ. և բեկումն մեծ, * Եղիցի 2
գեղեցկին, և փափկացելոյն։ և բարձ_
ցի բարձրութի քո դուստր սիոնի։
* Եկեսցեն 'ի նա հովիւք և խաշինք իւր 3
եանց. և կանգնեսցեն շուրջ զնովաւ
զխորանս իւրեանց. և հովուեսցեն իւր_
աքանչիւր ձեռամբ։ * Պատրաստեցա 4
րուք 'ի վերայ նր պատերազմ. արիք՝
և ելցուք 'ի վերայ նր 'ի միջօրէի։ վայ
մեզ. զի տիւն կարճատեաց. և հասին
5 ստուերք երեկորւոյ։ * Արիք՝ և ելցուք
'ի գիշերի. և ապականեսցուք զհի_
6 մունս նր։ * Զի այսպէս ասէ Տր զօ_
րուեց. ջարդեցէք զփայտակերտս նր.
արկէք 'ի վր երուսաղէմի զօրս. զի նա
է քաղաք ամենևին սուտ։ բռնութի
7 'ի մէջ նորա։ * Զոր օրինակ ցրտացու
ցանէ գուբ զջուր իւր. այնպէս և նա
ցրտացուցանէ զչարիս իւր։ ամպարշ_
տութի՝ և թշուառութի լուիցի 'ի մի_
ջի նր. յանդիման իւր հանապազ՝ ցա_
8 ւօք՝ և տանջանօք։ * Խրատեսցիս երէմ.
դուցէ երբէք վերասցի անձն իմ 'ի քէն.
դուցէ երբէք արարից զքեզ անապատ
երկիր. ուր ոչոք երբէք բնակեսցէ։
9 * Զի այսպէս ասէ Տր զօրութեանց.
կթեցէք՝ կթեցէք. ճռաքաղ արարէք
զմնացորդս իղի. և անդրէն կրկնես
10 ջիք՝ որպ կթօղ յոճ իւր։ * Ընդ ում խօ
սեցայց. և ում եղէց վկայութիւն՝ և
լուիցէ. ահաւասիկ անթլփատք են
ականջք նց. և ոչ կարեն լսել. ահա
բան Տն եղև նց 'ի նախատինս. և ոչևս
11 ախորժեսցեն զնա։ * Այլ ես զբարկու
թի իմ լցի՝ և արգելի. և ոչ վախճա_
նեցի զնն։ հեղից 'ի վր տղայոց արտա
քուստ. և 'ի ժողովս երիտասարդաց 'ի
միասին. զի այր և կին առհասարակ
ըմբռնեսցին. ծեր հանդերձ կատարե
12 լովն աւուրբք ընկրկեսցին։ * Այլ ըմ_
բռնեսցին տունք նց 'ի ձեռս օտարաց։
անդք և կանայք նց 'ի միասին։ զի ձգե
ցից զձեռն իմ 'ի վր բնակչաց երկրին
13 այնորիկ՝ ասէ Տր։ * ‖ Զի 'ի փոքունց
նոցա մինչև 'ի մեծամեծս. ամենեքին
կատարեցին զանօրէնութի։ 'ի քահա
նայէ մինչև 'ի սուտ մարգարէ. ամե_
14 նեքեան արարին ստութի։ * Այլ բժշ
կեին զհարուածս դստեր ժողովրդեան
իմոյ ընդ արհամարհանս. և ասէին խա
ղաղութի, խաղաղութի. և ո՞ւր է խա
15 ղաղութի։ * Յամօթ եղեն, զի պակա
սեցան. և ոչ որպ ամաչեցեալք ամաչե
ցին, և զանարգանս իւրեանց ոչ առին
'ի միտ։ վն այնորիկ անկցին 'ի կործա_
նումն իւրեանց. և 'ի ժամանակի այցե
լութե իւրեանց տկարասցին, ասէ Տր։
16 * Այսպէս ասէ Տր. կացէք 'ի ճանա_
պարհս՝ և դիտեցէք. և հարցէք զյաւի
տենական շաւղաց Տն. և տեսէք, ո՞ր է
ճանապարհ բարի՝ և գնացէք ընդ նա.
‖ և գտջիք զսրբութի անձանց ձերոց.
17 և ասացին, թէ ոչ երթիցուք։ * Այլ
կացուցի 'ի վր ձեր դէտս. լուարուք
բարբառոյ փողոյն. և ասեն, ոչ լուի_
18 ցուք։ * Վն այնորիկ լուան ազգք. և
որք հովուէին զհօտս 'ի նոսա. որքան
19 ես արարից ընդ նոսա։ * Լուր երկիր.
ահա_

‖ Եսայ. 56.11. Ստր. 8.10.

տարաշխեսցին

‖ Մատ. 11.29.

աՀաւասիկ ածից 'ի վ̃ժողովրդեանդ
այդորիկ չարիս • ըստ պտղոյ ապստամ
բութե̃ իւրեանց • զի բանից իմոց ո՛չ
անսացին • և զօրէնս իմ մերժեցին :
‖ Եսայ. 1.11. *Ընդէ՞ր է այդ • զի բերես ինձ խունկս 20
'ի սաբայէ • և կինամոմոն յերկրէ Հե_
ռաստանէ • ողջակէզք ձեր չե՛ն ընդ_
ունելիք • և զոՀք ձեր ինձ ո՛չ քաղցրա
ցան : *Վ̃ այդորիկ այսպէս ասէ Տր̃ • 21
աՀաւասիկ ես տաց 'ի վերայ ժողովր_
դեանդ այդորիկ ախտս՝ և ախտասցին
'ի նմին, Հարք և որդիք 'ի միասին • դրա
ցին և ընկեր իւր կորիցեն : *Այսպէս 22
ասէ Տր̃ • աՀաւասիկ զօր գայ 'ի Հիւ_
սիսոյ • ազգ մեծ՝ և թագաւորք բա_
զումք՝ զարթիցեն 'ի ծագաց երկրի :
* Աղեղնաւորք և տիգաւորք • ազդ 23
ժպիրՀ և անողորմ • ձայն նորա իբրև
զձայն ծովու յարուցելոյ • կառօք և
երիվարօք ճակատեսցի : լաստեսցի
իբրև զՀուր 'ի պատերազմ 'ի վ̃ քո
դուստր սիօնի : * Լուաք զլուր նոցա՝ 24
և լքան ձեռք մեր • նեղութիւնք կալան
զմեզ իբրև երկունք ծննդականի :
*Մի՛ ելանէք յանդս • և ընդ ճանա_ 25
պարՀս մի՛ գնայք • զի սուր թշնամեաց
շուրջ պատեալ է : * Դուստր ժողովր 26
դեան իմոյ զքուրձ զգեցի՛ր • մոխիր
տարածեա՛ • ա՛ռ զսուգ սիրելւոյ • և
կոծեա՛ց զկոծ ողորմ • զի յանկարծակի
եկեսցէ թշուառութի̃ 'ի վերայ ձեր :
* Փորձիչ ետու զքեզ ժողովրդոց պա_ 27
շարելոց : և դիտասջի՛ր փորձել ինձ զճա
նապարՀ դոցա : * Ամենեքին անՀնա_ 28
զանդք գնան կամակարութե̃ • և իբրև
զպղինձ և զերկաթ ամենեքին ապակա
նեալք : * Պակասեցան փուքք 'ի Հրոյ • 29
պակասեցաւ կապար • զուր աշխատի
արծաթագործ՝ և նոցա չարիք ո՛չ Հա_
լեցան : *Արծաթ խոտան կոչեցէք զնս̃՝ 30
զի խոտեաց զնս̃ Տր̃ : ( լո՛ւարու՛ք զպատ
գամս Տե̃ ա̃մ Հրէաստան : )

## ԳԼ. Է.

Պատգամն որ եղև առ երեմիայ 'ի 1
Տե̃ և ասէ : *Կա՛ց 'ի դրան տանն 2
Տե̃ • և ընթերցի՛ր անդ զբանս զայս՝ և
ասասցես : լո՛ւարու՛ք զբան Տե̃ ա̃մ
Հրէաստան • որք մտանէք ը̃ դրունսդ
ընդ այդոսիկ՝ երկիր պագանել Տե̃ :
*Այս̃ ասէ Տր̃ զօրութեց՝ Ա̃ծ իս̃ի : 3
‖ Երեմ. 26.13. ‖ Ուղի՛ղ արարէք զճանապարՀս ձեր՝ և
զղ̃նացս • և բնակեցուցից զձեզ 'ի տեղ
ւոջ յայսմիկ : * Եւ մի՛ յանձնապաս_ 4
տան լինիք 'ի բանս ստութե̃ • զի ամե_
նևին ո՛չ օգնեսցեն ձեզ՝ որք ասեն տա
ճար Տե̃ • տաճար Տե̃ • տաճար Տե̃ :
*Եթէ ուղղելով ուղղիցէք զճանա_ 5
պարՀս ձեր՝ և զգ̃նացս • և եթէ առնե
լով առնիցէք իրաւունս 'ի մէջ առն՝ և
6 ընկերի իւրոյ : *Եւ՛ զեկն՝ և զորբն և
զայրին ո՛չ յաղթաՀարիցէք • և զարիւն
անպարտ ո՛չ Հեղուցուք 'ի տեղւոջդ
յայդմիկ • և զՀետ աստուծոց օտարաց
7 ո՛չ երթայցէք 'ի չարիս ձերում : *Բնա
կեցուցից զձեզ 'ի տեղւոջդ յայդմիկ •
յերկրի՝ զոր ետու Հարցն ձերոց յաւի
8 տենից մինչև ց յաւիտեան : *Ապաթէ
դուք յանձնապաստանիցիք 'ի բանս
ստութե̃ • ուստի ոչ ի՛նչ օգտիցիք :
9 *Եւ՛ գողանայցէք՝ և սպանանիցէք՝ և
շնայցէք • և երդնուցուք սուտ • և ար_
կանիցէք խունկս բաՀաղու • և երթայ
ցէք զՀետ աստուծոց օտարաց • զորս
ո՛չ գիտիցէք • ( ուստի չար լինիցի ձեզ : )
10 * Եւ՛ գայցէք՝ կայցէք առաջի իմ 'ի
տանս յայսմիկ • յորոյ վերայ կոչեցեալ
է անուն իմ • և ասիցէք՝ մերժեցաք
յառնելոյ զա̃մ գարշելիսն զայնոսիկ :
11 *‖ Միթէ այր աւազակաց եղև տունդ
իմ • յորոյ վերայ կոչեցեալ է անուն
իմ այդ առաջի ձեր • ես աՀաւասիկ տե
12 սի՝ ասէ Տր̃ : * Օն չեղայք 'ի տեղին իմ
'ի սելով • ուր բնակեցուցի զանուն իմ
անդ զառաջինն : և տեսի՛ք՝ զինչ արա
րի ընդ նա • յերեսաց չարեաց ժողովր
13 դեան իմոյ իս̃ի : *Եւ արդ փոխանակ
զի արարէք զայդ ա̃մ գործս՝ ասէ Տր̃ •
և խօսեցայ ընդ ձեզ ընդ առաւօտս
խօսելով՝ և ո՛չ լուա՛յք ինձ • ‖ կոչեցի
զձեզ՝ ո՛չ ետուք ինձ պատասխանի :
14 *‖ Եւ արարից ընդ տունդ ընդ այդ՝
յորոյ վերայ կոչեցեալ է անուն իմ •
յոր դուքդ ապաստանիք • և ընդ տե_
ղիդ՝ զոր ետու ձեզ՝ և Հարց ձերոց • որպ̃
15 արարի ը̃ սելով : *Եւ ընկեցից զձեզ
յերեսաց իմոց՝ որպ̃ ընկեցի զեղբարսն
16 ձեր՝ զա̃մ զաւակն եփրեմի : *‖ Եւ դու
մի՛ կար յաղօթս 'ի վ̃ ժողովրդեանդ
այդորիկ • և մի՛ խնդրեր 'ի վ̃ դոցա
զողորմութի̃ • մի՛ աղաչեր՝ և մի՛ անկա
նիր առաջի իմ վ̃ դոցա • զի ո՛չ լսեմ
17 քեզ : * Թէ ո՛չ տեսանես • զի՛նչ գոր_
ծեն դոքա 'ի քաղաքս յուդայ • և 'ի ճա
18 նապարՀս երէմի : * Որդիքն նց̃ զփայտ
քաղեն • և Հարք նոցա Հրատս արկա_
նեն • և կանայք նց̃ զՀայս Հարկանեն •
առնեն զկարկանդակս զօրութե̃ երկ
նից • և նուիրեն զնուէրս աստուծոց
օտարաց • զի բարկացուցանիցեն զիս :
19 *Միթէ զի՞ս բարկացուցանեն՝ ասէ
Տր̃ • և ո՛չ զանձինս • զի ամաչեսցեն
20 երեսք նց̃ : *Վ̃ այնորիկ այսպէս ասէ
Տր̃՝ աՀա բարկութի̃ իմ • և սրտմտութի̃
իմ Հեղցի 'ի վերայ տեղւոյդ այդորիկ •
'ի վ̃ մարդոյ և անասնոյ • և 'ի վ̃ փայ
տի

[Margin: Եսայ. 56.7. Մատթ. 21.13. Մարկ. 11.17. Ղուկ. 19.46. Առակ. 1.24. Եսայ. 65.12. Ա Թագ. 4.2. և 10. Երեմ. 14.11.]

տի ագարակի. և 'ի վերայ արդեանց երկրի բորբոքեսցի՝ և ոչ շիջցի։ 21 *Այսպէս ասէ Տր̅ զօրութեանց. Ած̅ Իղի. զողջակէզս ձեր ժողովեցէք հանդերձ զոհիւք ձերովք. և կերայք միս։ 22 *Զի ոչ խօսեցայ ընդ հարսն ձեր. և ոչ պատուէր ետու նոցա՝ յաւուրն յորում հանի զնոսա յերկրէն եգիպտացւոց՝ վս̅ բանի ողջակիզաց և զոհից։ 23 *Այլ զայս բան պատուիրեցի նց̅՝ և ասեմ. լուարուք ձայնի իմում. և եղէց ձեզ Ած̅ և դուք եղիջիք ինձ 'ի ժողովուրդ. և գնասջիք յա̅մ ճանապարհս իմ. զոր պատուիրեցի ձեզ. զի բարի լինիցի ձեզ։ 24 *Եւ ոչ լուան ինձ. և ոչ անսաց ունկն նց̅. այլ գնացին ըստ խորհրդոց սրտից իւրեանց չարաց. և եղեն յետս՝ և ոչ յառաջ։ 25 *Յօրէ յորմէ ելին հարքն նոցա յերկրէն եգիպտացւոց մինչև ցայսօր. և առաքեցի առ ձեզ զա̅մ զծառայս իմ զմարգարէս 'ի տուէ՝ և ընդ առաւօտս առաքեալ։ 26 *Եւ ոչ լուան ինձ. և ոչ անսաց ունկն նոցա. ‖և խստացուցին զպարանոցս իւրեանց առաւել քան զհարցն իւրեանց։ 27 *Եւ ասասցես ցնոսա զբանս զայս. և ոչ լուիցեն քեզ. և կոչեսցես զնս̅՝ և ոչ տայցեն քեզ պատասխանի։ 28 *Եւ ասասցես առ նոսա. այս ազգ են՝ որք ոչ լուան ձայնի Տն̅ Այ̅ իւրեանց. և ոչ ընկալան զխրատ։ պակասեցան հաւատք. և բարձաւ ճշմարտութի̅ 'ի բերանոյ նոցա։ 29 *Կտրեա́ զհեր քո՝ և 'ի բաց ընկեա. և ա́ռ ողբս 'ի շրթունս. զի խոտանեաց Տր̅՝ և մերժեաց զազգն՝ որ առնէր զայս։ 30 *Զի արարին որդիքն յուդայ չար առաջի իմ՝ ասէ Տր̅. կարգեցին զգարշելիսն իւրեանց 'ի տանն. յորոյ վերայ կոչեցեալ էր անուն իմ, պղծել զնա։ 31 *Եւ շինեցին բագինս տօփեթայ. որ է 'ի ձոր որդւոցն ենովմայ. այրել զուստերս և զդստերս իւրեանց 'ի հուր. զոր ոչ հրամայեցի նոցա՝ և ոչ զմտաւ ածի 'ի սրտի իմում։ 32 *Վս̅ այնորիկ ահա աւուրք եկեսցեն՝ ասէ Տր̅. և ոչ ևս ասասցեն բագինս տօփեթայ. և ձոր որդւոցն ենովմայ, այլ ձոր կոտորելոց. և թաղեսցեն 'ի տօփեթն առ տեղւոյն չքաւելոյ։ 33 *Եւ եղիցին դիակունք ժողովրդեանդ այդորիկ՝ կերակուր թռչնոց երկնից՝ և գազանաց երկրի. և ոչոք իցէ, որ հալածիցէ։ 34 *‖Եւ բարձից 'ի քաղաքացն յուդայ՝ և յանցիցն եէ̅մի զձայն խրախճանաց. և զձայն ցնծացելոց. զձայն հարսին. և զձայն փեսայի. զի յանապատ եղիցի երկիր։

‖Մյր. 16.12.

‖Եզէկ. 26. 13.

ԳԼ: Ը.

1 'Ի ժամանակի յայնմիկ ասէ Տր̅. հանցեն զոսկերս թագաւորացն յուդայ՝ և զոսկերս իշխանաց նոցա. և զոսկերս քահանայից. և զոսկերս մարգարէից. և զոսկերս բնակչացն եէ̅մի 'ի գերեզմանաց իւրեանց։ 2 *Եւ ցամաքեցուսցեն յարևու. և ընդ լուսնով՝ և ընդ ա̅մ աստեղօք՝ և առաջի ա̅մ զօրութեանց երկնից՝ զորս սիրեցինն. և որոց ծառայեցինն. և որոց զհետ գնացին. և յորս ապաստան լինէին. և երկիր պագանէին նց̅. և ոչ կոծեսցին, և ոչ լայցեն, այլ 'ի նշաւակ եղիցին 'ի վր̅ երեսաց երկրի։ 3 *Զի ախորժեսցին զմահ՝ և ոչ զկեանս. և զմնացորդս՝ որք մնացեալ իցեն յազգէ անտի չարէ. 'ի̅ ա̅մ տեղիս մնացելոցն՝ ուր և մերժեցից զնոսա անդր՝ ասէ Տր̅ զօրութեանց։ 4 *Եւ ասասցես ցնս̅. այսպէս ասէ Տր̅. մի թէ որ գլորի՝ ոչ յառնիցէ. կամ որ խոտորի՝ ոչ ևս դառնայցէ։ 5 *Ընդ է̅ր խոտորեցաւ ժողովուրդդ այդ՝ և եէ̅մ, խոտորումն ժպիրհ. և պնդեցան կամօք իւրեանց՝ և ոչ կամեցան դառնալ։ 6 *Ո́ւնկնդիք՝ և լուարուք՝ ոչ այնպէս խօսին. և ոչ գոյ մարդ՝ որ զղջանայ 'ի չարեաց իւրոց. և ասէ, թէ զինչ գործեցի. կասեաց ընթացօղն յընթացից իւրոց՝ իբրև զձի ընդ քիրտն մտեալ 'ի խինջել իւրում։ 7 *Ընդ արսին յերկինս ծանեաւ զժամանակ իւր. տատրակ և ծիծառն և թռչունք վայրիք պահեցին զժամանակս մտից իւրց̅. և ժողովուրդ իմ ոչ ծանեաւ զիրաւունս Տն̅։ 8 *Զիա́րդ ասիցէք՝ թէ իմաստունք եմք. և օրէնք Այ̅ են ընդ մեզ. վս̅ այնորիկ զուր եղև, և սուտ վիճակն դպրաց։ 9 *Յամօթ եղեն իմաստունքն. զարհուրեցան, և պարտեցան. զի զբան Տն̅ անարգեցին. զի՞նչ իմաստութի̅ իցէ 'ի նոսա։ 10 *‖Վս̅ այնորիկ տաց զկանայս նց̅ այլոց. և զագարակս նց̅ օտար ժառանգաց. զի 'ի փոքուէ մինչև 'ի մեծամեծս նոցա՝ ա̅մ ոք ագահէ զագահութի̅. 'ի մարգարէէ մինչև ցքահանայն, ա̅մ ոք առնէ զանիրաւութի̅։ 11 *Եւ բժշկէին զբեկումն դստեր ժողովրդեան իմոյ՝ ընդ արհամարհանս. և ասէին խաղաղութի̅ խաղաղութի̅՝ և ոչ գոյր խաղաղութի̅։ 12 *Ամաչեսցեն՝ զի արարին զպղծութի̅, սակայն և այնպէս ոչ ամաչեցին ամօթով՝ և ըզպատկառանս ոչ առին 'ի միտ՝ վասն այնորիկ անկցին ընդ անկեալս. 'ի ժամանակի այցելութե̅ն իւրեանց տկարասցին՝ ասէ Տր̅։ 13 *Եւ ժողովեսցեն զսը

‖Եսայ. 56.11.

‖Եր. 6. 13.

գիւնս

գիւնս իւրեանց՝ ասէ Տր̅ . չիք խաղող յայգիս նոցա . և ոչ թուզ 'ի թզենիս նց̅ . և տերևն թափեցաւ . ետու նոցա՝ և էանց զնոքօք : 14 *Ընդէր մեք զի՞ նստիցիմք . ժողովեցարուք՝ և մտցուք 'ի քաղաքս ամուրս . և անդր անկցուք . զի Տր̅ Ած̅ ընկէց զմեզ՝ և արբոյց մեզ զջուր դառնութե̅ . զի մեղաք առաջի նորա : 15 *Ժողովեցաք 'ի խաղաղութի, և ոչ գոյր . 'ի բարութե̅ 'ի ժամանակի բժշկութե̅ և ահա տագնապ : 16 *'Ի Դանայ լուիցուք ձայն երագութե̅ երիվարայ նր̅ . 'ի ձայնէ խրխնջելոյ հեծելոյ նորա շարժեցաւ երկիր ամ̅ . եկեսցէ՝ և կերիցէ զերկիր լրի՛ իւրով՝ զքաղաքս և զբնակիչս նր̅ : 17 *Զանզի ես առաքեսից արձակեմ 'ի ձեզ օձս կոտորիչս . յորս ոչ մոմնիցեն թովչութիք . և հարկանիցեն զձեզ՝ ասէ Տր̅ : 18 *Ան՛յան բժշկական ցաւս սրտից ձերոց տարակուսելոց : 19 *Ահա ձայն գուժի դստեր ժողովրդեան իմոյ յերկրէ հեռաստանէ . մի թէ Տր̅ ոչ գուցէ 'ի Սիոն . կամ թագաւոր անդ ո՞չ իցէ . ընդէ՞ր բարկացուցին զիս դրօշելովքն իւրեանց . և ունայնովքն օտարոտովք : 20 *Անցին հունձք . էանց ամառն . և մեք ոչ փրկեցաք : 21 *'Ի վր̅ բեկման դստեր ժողովրդեան իմոյ խորտակեցայ . խաւարեցայ տարակուսանօք . յաղթահարեցին զիս երկունք իբրև ծննդականի : 22 *Մի թէ ռետին ոչ գուցէ 'ի Գաղաադ . կամ բժիշկ ո՞չ կայցէ անդ՝ ընդէ՞ր ոչ եղև բժշկութիւն դստեր ժողովրդեան իմոյ :

Մատ. 14.19. — փօխ.

## ԳԼ: Թ.

1 Ո՞ տայր զգլուխս իմ 'ի ջուր . և զաչս իմ աղբիւր արտասուաց . և լայի զժողովուրդս զայս, զտիւ և զգիշերն՝ և զվիրաւորեալս դստեր ժողովրդեան իմոյ : 2 *Ո՛ տայր ինձ յանապատի դոյզն օթեվանս . և թողուի զժողովուրդ իմ, և գնայի 'ի դոցանէ . զի ամենեքին շնամն՝ առ հասարակ ժողովք արհամարհողաց : 3 *Եւ լարեցին զլեզուս իւրե̅ իբրև զաղեղն ստութե̅ և ոչ հաւատք զօրացան 'ի վերայ երկրի . զի 'ի չարեաց 'ի չարիս ելին . և զիս ոչ ծանեան՝ ասէ Տր̅ : 4 *Իւրաքանչիւր յընկերէ իւրմէ զգոյշ լերուք . և յեղբարս ձեր մի յուսայք . զի ամ̅ եղբայր խաբելով խաբէ . և ամ̅ բարեկամ նենգութե̅ գնայ : 5 *Իւրաքանչիւր զբարեկամ իւր այպանէն . և զճշմարտութի ոչ խօսեսցին . ուսան լեզուք նց̅ խօսիլ զստուի . զրկեցին՝ և ոչ դադարեցին : 6 *Ժողովել վաշխս 'ի վերայ վաշխից . և զնենգութե̅ 'ի վր̅ նենգութե̅ . և ոչ կամեցան զիս ճանաչել՝ ասէ Տր̅ : 7 *Վս̅ այսորիկ այսպէս ասէ Տր̅ Տր̅ զօրութեց . ահա՛ասիկ ես ջեռուցից զնոսա՝ և փորձեցից զնոսա . զի՞ արարից յերեսաց չարեաց դստեր ժողովրդեան իմոյ :

8 *Նետ խոցոտիչ լեզուք նոցա , նենգաւորք բանք բերանոյ նց̅ . ընդ ընկերի իւրում խօսի զխաղաղութի . և 'ի սրտի իւրում ունի զթշնամութի : 9 *Մի թէ 'ի վերայ այսոցիկ ո՞չ արարից այցելութի՝ ասէ Տր̅ . կամ յազգէ այնպիսւոյ ո՞չ խնդրիցէ զվրէժ անձն իմ : 10 *Կոծ առէք 'ի վր̅ լերանց . և ձայնս 'ի վր̅ բլրոց անապատի . ողբացէ՛ք, քանզի պակասեցան առ 'ի չգոյէ մարդկան անցաւորաց . և ոչ լուան զձայնս ստացուածոց . 'ի թռչնոց երկնից մինչև ցանասունս յիմարեցան , և գնացին : 11 *Եւ տաց զԵրուսաղէմ 'ի գերութի . և 'ի բնակութի վիշապաց . և զքաղաքս Յուդայ եդից յապականութի առ 'ի չգոյէ բնակչաց : 12 *Ո՞վ է այր իմաստուն՝ և 'ի միտ առցէ զայս . և առ որում բան բերանոյ Տն̅ պատմեսցէ մեզ . թէ վասն է՞ր կորեաւ երկիր . լքաւ իբրև զանապատ առ 'ի չգոյէ անցաւորաց : 13 *Եւ ասէ ցիս Տր̅՝ վասն թողլոյ նոցա զօրէնս իմ, զոր ետու առաջի երեսաց նոցա . և ոչ լուան ձայնի իմում : 14 *Եւ գնացին զհետ հաճոյից սրտից իւրեանց չարաց . և զհետ կռոցն՝ զոր ցուցին նոցա հարք նց̅ : 15 *Վս̅ այնորիկ այսպէս ասէ Տր̅ զօրութեց՝ Ած̅ Իղի . ահաւադիկ ես ջամբեմ ժողովրդեանդ այդմիկ վտանկ . և արբուցանեմ դոցա զջուր դառնութե̅ : 16 *Եւ ցրուեցից զդոսա ընդ ազգս՝ զոր ոչ գիտացին դոքա , և հարք իւրե̅ . և արձակեցից 'ի վերայ դոցա սուր՝ մինչև սատակեցից զդոսա նովաւ :

17 *Այսպէս ասէ Ած̅ զօրութեց . զմտա՛ծէք՝ և կոչեցէ՛ք զձայնարկուս՝ և եկեսցեն . և առ իմաստունս կանայս առաքեցէք . և ձայնեսցեն : 18 *Եւ ստիպեսցեն . և առցեն ողբս 'ի վր̅ ձեր՝ և իջուսցեն աչք ձեր արտասուս . և արտևանունք ձեր բղխեսցեն զջուր : 19 *Զի ձայն ողորմ գուժեաց 'ի Սիոն . զի՞արդ թշուառացաք . ամաչեցէք յոյժ . զի լքաք զերկիր : և ընկեցաք զբնակութիւ մեր : 20 *Լուարուք կանայք զպատգամս Այ̅ . և ընկալցին ականջք ձեր զբանս բերանոյ նորա . և ուսուցէք դստերաց ձերոց ձայնս . և կին ընկերի իւրում ողբս : 21 *Զի ել մահ ընդ պատուհանս ձեր . և եմուտ յերկիր ձեր . ջնջել զտղայս արտաքուստ՝ և զերիտասարդս 'ի հրապարակաց : 22 *Այսպէս ասէ Տր̅ . և

Սաղ. 27.3. — Մատ. 23.15.

և եղիցին դիակունք մարդկան նշա-
նակ ընդ երեսս դաշտաց երկրի ձերոյ.
և իբրև զխոտ զկնի հնձողի. և ոչոք
իցէ. որ ժողովիցէ։ *Այսպէս ասէ 23
Տր̅. մի՛ պարծեսցի իմաստունն յիմաս
տութիւն իւր. և մի՛ պարծեսցի հզօրն ՚ի
զօրութիւն իւր. և մի՛ պարծեսցի մեծն
՚ի մեծութիւն իւր։ *Այլ այն պարծես 24
ցի՝ որ պարծիցին, իմանալ և ճանաչել
զիս. թէ ես եմ Տր̅. որ առնեմ զիրաւ
ունս՝ և զողորմութի. և զարդարութի
՚ի վր̅ երկրի. և ՚ի նոյնս են կամք իմ՝
ասէ Տէր։ *Ահա աւուրք եկեսցեն՝ 25
ասէ Տր̅. և արարից այց ՚ի վերայ ամ̅
թլփատելոց յանթլփատութենէ իւրց̅.
*՚Ի վերայ եգիպտոսի. և ՚ի վր̅ յուդայ. 26
և ՚ի վերայ եդովմայ. և ՚ի վր̅ որդւոցն
ամոնայ. և ՚ի վերայ որդւոցն մովա-
բու. և ՚ի վր̅ ամ̅ յապաւելոցն զերեսօք
բնակչացն անապատի. զի ամ̅ ազգք
անթլփատք են մարմնով. և ամ̅ տունն
իէլի անթլփատք սրտիւք իւրեանց։

Ա. Կոր. 1. 31. 2. Կոր. 10. 17.

ԳԼ: Ժ.

Լուարո՛ւք զպատգամն՝ զոր խօսե-
ցաւ Տր̅ ՚ի վր̅ ձեր տունդ իէլի։ 1
*Այսպէս ասէ Տր̅. ըստ ճանապարհաց 2
հեթանոսաց մի՛ ուսանիք. և ՚ի նշանաց
երկնից մի՛ զարհուրիք. զի նոքա երկն
չին յերեսաց նոցա։ *Զի ամ̅ օրէնք 3
հեթանոսաց սնոտիք են. փայտ յան-
տառէ հատեալ գործ ձեռաց հիւսան։
*Եւ ձուլ արծաթոյ՝ և ոսկւոյ զար- 4
դարեալ ուռամբք. և բեւեռօք հաս-
տատեցին զնոսա՝ զի ոչ շարժեսցին.
(արծաթ ճախարակեայ. արծաթ ՚ի
գործ արկեալ ՚ի թարշշէ. ոսկի եկեալ
՚ի մեմփաթայ։ ) *Եւ ձեռն ոսկերչի 5
գործեաց գործ ճարտարաց. կապու-
տակ և ծիրանի զգեցուցանեն նոցա.
և ոչ գնասցեն, այլ բառնալով բարձ
ցին՝ և ոչ քայլ մի տեղին փոխեսցեն. և
ոչ ինքնին ՚ի կրեւլեան ամբարձցին. և
մի՛ երկնչիք ՚ի նոցանէ. զի ոչ չար առ-
նեն. և բարի իսկ ոչ գոյ ՚ի նմա։ *Ոչ է՛ 6
ոք իբրև զքեզ Տր̅. մեծ ես՝ և մեծ է
անուն քո զօրութք։ *Ո՞ ոչ երկիցէ 7
՚ի քէն թագաւոր ազգաց. զի քեզ իսկ
վայելէ. զի յամ̅ իմաստունս հեթա-
նոսաց. և յամ̅ թագաւորս նոցա ո՛չ է
իբրև զքեզ։ *Եւ միանգամայն այ- 8
րեսցին. և սատակեսցին սնոտիք սնո-
տեաց. զի փայտք են։ *Եւ արծաթ 9
ընտիր եկեալ ՚ի թարշշայ. և ոսկի սո-
փաթայ. գործ ճարտարաց ամ̅. և ձե-
ռաց ոսկերչաց. կապուտակ և ծիրանի
հանդերձն նոցա՝ գործ իմաստնոց ամ̅։
*Այլ Տր̅ Ած̅ ճշմարիտ է. Ած̅ կեն- 10
դանի. և թագաւոր յաւիտենական.
՚ի սրտմտութենէ նր̅ շարժեսցի երկիր։
*Եւ ոչ հանդարտեսցին ազգք բար-
11 կութենէ նորա։ *Եւ այսպէս ասասջիք
ցնոսա. աստուածք՝ որք զերկինս և
զերկիր ոչ արարին, կորիցեն յերկրէ.
12 և ՚ի ներքոյ երկնիցս այսոցիկ։ *Տր̅
է՝ որ արար զերկիր զօրութք իւրով՝
և կանգնեաց զտիեզերս իմաստութք
իւրով. և խորհրդով իւրով ձգեաց
13 զերկինս։ *Եւ ՚ի տալ զձայն իւր
լնու զբազմութի ջուրց յերկինս. և
հանէ զամպս ՚ի ծագաց երկրի. և զփայ
լատակունս իւր յանձրևս արար. հանէ
14 զհողմս ՚ի շտեմարանաց իւրոց։ *Յի-
մարեցաւ ամ̅ մարդ ՚ի գիտութենէ. յա-
մօթ եղեն ամ̅ ոսկերիչք դրօշելովք
իւրեանց. զի սուտ ձուլեցին. և չիք
15 շունչ ՚ի նոսա։ *Սնոտիք են՝ և գործք
խաբէութենէ. ՚ի ժամանակի այցելութե
16 իւրեանց կորիցեն։ *Այլ ո՛չ այնպիսի
է բաժինն յակոբու. զի որ ստեղծն
զամ̅՝ նա է բաժին նորա. և իէլ գաւա
զան ժառանգութեն նորա. Տր̅ զօրու
17 թեց անուն նորա։ *Ժողովեա՛ ՚ի բա
ցուստ զզօրութի քո. բնակեալդ ՚ի մէջ
18 ընտրելոց։ *Զի այսպէս ասէ Տր̅ ա-
հաւասիկ ես քարընդոտնեմ զբնակիչս
երկրիդ այդորիկ նեղութք. և նեղե-
19 ցից զնոսա՝ զի մի՛ գտցին։ *Վա՛յ ՚ի վր̅
բեկման քոյ՝ զի ցաւագինք են հարուա
ծք քո. և ասեմ, արդարև այդ իսկ
20 են վէրք իմ, և էհաս յիս։ *Խորանն
իմ չուառացաւ, կորեաւ. և ամ̅ խորա
նափեղկք իմ քակտեցան. որդիք իմ
և խաշինք իմ ոչ ուրեք են. և ոչ ևս
գոյ տեղի խորանի իմոյ. և ոչ տեղի
21 խորանափեղկաց իմոց։ *Զի հովիւքն
անմտացան. և զՏր̅ ոչ խնդրեցին. վն̅
այնորիկ ոչ իմացան ամ̅ արօտականքն.
22 և ցրուեցան։ *Ձայն գուժի եկեսցէ՝
և շարժումն մեծ յերկրէ հիւսիսոյ.
կարգել զքաղաքս յուդայ յապակա-
նութի և ՚ի դադարս ջայլամանց։
23 *Գիտեմ Տր̅՝ զի ոչ մարդոյ է ճանա-
պարհ իւր. և ոչ այր գնասցէ. և յա-
ջողեսցէ զճանապարհս իւր։
24 *Խրատեա՛ զմեզ Տր̅ բայց իրաւամբք,
և մի՛ ցասմամբ. զի մի՛ սակաւաւորս
25 արասցես զմեզ։ *Հեղ զբարկութի
քո ՚ի վերայ հեթանոսաց՝ որք ոչ գի-
տեն զքեզ. և ՚ի վերայ ազգաց՝ որք զա
նուն քո ոչ կարդացին. զի կերին զյա
կոբ՝ և սպառեցին զնա. և վախճանե-
ցին զնա. և զարօտս նորա աւերեցին։

Իմաստ. 13. 11. և 14. 8.
Միք. 7. 18.
Յայտ. 15. 4.
Ծննդ. 1. 1.
Անդ. 51. 15.
Սաղ. 134. 7.
Անդ. 51. 16.
Սաղ. 6. 1.
Սաղ. 78. 6.

## Գլ: ԺԱ.

1 Բանն՝ որ եղեւ առ Երեմիա ՚ի Տէ՟ եւ ասէ: 2 *Լուարուք զբանս ուխտիս այսորիկ. եւ խօսեցարուք ընդ արս Յուդայ՝ եւ ընդ բնակիչս Եր՟մի: 3 *Եւ դու ասասցես ցնոսա. այսպէս ասէ Տր ԱԾ Իղ՟ի՝ անիծեալ լիցի մարդն՝ որ ոչ լուիցէ բանից ուխտիս այսորիկ: 4 *Զոր պատուիրեցի հարցն ձերոց. յաւուրն յորում հանի զնս՟ յերկրէն Եգիպտացւոց ՚ի հնոցէ երկաթոյն՝ եւ ասեմ, լուարուք ձայնի իմում. եւ արարէք զայդ բոլոր զոր ինչ պատուիրեմ ձեզ. եւ եղիջիք ինձ ՚ի ժողովուրդ. եւ ես եղէց ձեզ յԱԾ: 5 *Եւ հաստատեցից զերդումն իմ՝ զոր երդուայ հարցն ձերոց. տալ նց՟ զերկիրն՝ որ բղխէ զմեղր եւ զկաթն. որպ՟ եւ այսօր: պատասխանի ետու՝ եւ ասեմ, այո Տր՟ եղիցի: 6 *Ասէ ցիս Տր՟ ընթերց զամ՟ զբանսդ զայդոսիկ ՚ի քաղաքսդ Յուդայ՝ եւ արտաքոյ Եր՟մի. եւ ասասցես, լուարուք զպատգամս ուխտիդ այդորիկ. եւ արարէք զդոսա: 7 *Զի վկայութբ՟ եդի զվկայութի հարցն ձերոց՝ յաւուրն հանելոյ իմ զնս՟ յերկրէն Եգիպտացւոց՝ եւ մինչեւ ցայսօր՝ կանխել ընդ առաւօտս՝ եւ դնել զվկայութի՝ եւ ասել. լուարուք ձայնի իմում. եւ ոչ լուան: 8 *Եւ խոտորեցուցին զլսելիս իւրեանց. եւ գնացին այր ըստ յօժարութե սրտից իւրց՟ ՚ի չարիս: եւ ածի ՚ի վերայ նոցա զամ՟ բանս ուխտիս այսորիկ՝ զոր պատուիրեցի առնել նոցա՝ եւ ոչ արարին:

9 *Եւ ասէ ցիս Տէր. գտաւ կնճիռն յարսդ Յուդայ՝ եւ ՚ի բնակիչսդ Եր՟մի: 10 *Դարձան յանիրաւութիւս հարցն իւրեանց առաջնոց. որք ոչ կամեցան լսել բանից իմոց. եւ ահաւադիկ երթան զհետ աստուծոց օտարաց ծառայել նց՟. եւ ցրեցին տունն Իղ՟ի եւ տունն Յուդայ զուխտ իմ. զոր ուխտեցի ը՟ հարս նոցա: 11 *Վասն այնորիկ այսպէս ասէ Տր՟. ահաւասիկ ես ածից ՚ի վր՟ դոցա չարիս. յորոց ոչ կարասցեն ելանել. եւ աղաղակեսցեն առ իս՝ եւ ոչ լուայց նց՟: 12 *Եւ գնասցեն քաղաքք Յուդայ՝ եւ բնակիչք Եր՟մի՝ եւ աղաղակեսցեն առ դիսն իւրեանց՝ որոց արկանէին խունկս. եւ փրկելով ոչ փրկեսցեն զնոսա ՚ի ժամանակի չարեաց իւրեանց: 13 *‖ Զի ը՟ թուոյ քաղաքացն քոց էին դիքն քո Յուդա. եւ ըստ թուոյ անցիցն Եր՟մի կարգեցիք բագինս՝ եւ սեղանս ամօթոյ, արկանել խունկս բահաղու:

‖ Վեր. 2. 28.

14 *‖ Եւ դու մի՛ կար յաղօթս վասն ժողովրդեանդ այդորիկ՝ եւ մի՛ աղաչեր վասն դոցա խնդրուածովք, եւ պաղատիր. զի ոչ լսեմ ՚ի ժամանակի՝ յորում կարդասցեն առ իս՝ ՚ի ժամանակի չարեաց իւրեանց: 15 *Զի ընդ սիրելին ՚ի ներքս ՚ի տաճարին իմում՝ արար գարշելիս. մի՞ թէ աղօթք եւ միս նուիրեալ անցուցանիցե՞ն ՚ի քէն զչարիս քո. կամ ՚ի թէ այնպիսեօք ապրիցի՞ս: 16 *Ձիթենի գեղեցիկ վարսաւոր տեսլեամբ կոչեաց Տր՟ զանուն քո. ՚ի ձայնէ թլփատութե նց՟ մեծ են նեղութիք ՚ի վր՟ քոյ. անպիտանացան ոստք քո: 17 *Եւ Տր՟ ԱԾ զօրութեց՝ որ տնկեաց զքեզ՝ խօսեցաւ ՚ի վերայ քոյ չարիս՝ փոխանակ չարեաց տանն Իղ՟ի, եւ տանն Յուդայ. զի արարին անձամբ անձանց ՚ի բարկացուցանել զիս յարկանել նոցա զխունկս բահաղու: 18 *Տր՟ ծանո՛ ինձ, եւ ծանեայց. յայնժամ տեսի զգործս նոցա: 19 *Եւ ես իբրեւ զգառն անմեղ վարեալ ՚ի սպանդ. ոչ գիտացի՝ թէ զինէն խորհեցան խորհուրդս, եւ ասեն. եկա՛յք, արկցուք փայտ ՚ի հաց նորա՝ եւ ջնջեսցուք զնա յերկրէն կենդանեաց. եւ անուն նր՟ մի՛ եւս յիշեսցի: 20 *‖ Տր՟ զօրութեանց՝ որ ընտրես զիրաւունս՝ եւ քննես զերիկամունս եւ զսիրտ, տեսից առ ՚ի քէն զվրէժխնդրութի առ ՚ի նս՟. զի քեզ յայտնեցի զերիկամունս իմ: 21 *Վասն այնորիկ այսպէս ասէ Տր՟ ՚ի վր՟ արանցն անաթովթայ՝ որք խնդրեն զանձն քո. եւ ասեն մի՛ մարգարէանար վասն մեր. ապա թէ ոչ՝ մեռանիս ՚ի ձեռաց մերոց: 22 *Վասն այդորիկ այսպէս ասէ Տր՟ զօրութեց. ահաւադիկ ես այց արարից ՚ի վր՟ նոցա. երիտասարդք նոցա սրով մեռցին. եւ ուստերք՝ եւ դստերք նց՟ սովու վախճանեսցին: 23 *Եւ մնացորդք ոչ եղիցին նց՟ զի ածից չարիս ՚ի վերայ բնակչացն անաթովթայ՝ յամի այցելութե նոցա:

‖ Վեր. 14.11.

‖ Վեր. 17.10. եւ 20.12.

## Գլ: ԺԲ.

1 Արդար ես Տր՟ եւ մատուցից առաջի քո զպաղերս. բայց խօսեցայց զիրաւունս: ‖ Զի՞ է, զի ճանապարհք ամբարշտաց յաջողեալք են. եւ երջանկացան ամենեքեան՝ որք արհամարհէին զարհամարհանս: 2 *Տնկեցեր զնոսա՝ եւ արմատացան: ծնան որդիս՝ եւ արարին զպտուղ: մերձ ես դու Տր՟ ՚ի բերանս նց՟. եւ հեռի յերիկամանց նոցա: 3 *Եւ դու Տր՟ գիտես զիս. տեսեր զիս՝ եւ փորձեցեր զսիրտ իմ առաջի քո. ժողովեա՛ զնոսա իբրեւ զոչխարս ՚ի սպանումն. եւ նուիրեա՛ զնս՟ յօր սպանման նց՟: 4 *Մինչեւ յե՞րբ զաւուդ ունիցի երկիր. եւ խոտ ամ՟ վայրի ցամաքեսցի: ՚ի չա-

‖ Յոբ. 21.7. Ամբ. 1.13.

չարեաց բնակչաց երկրին ապականե-
ցան անասունն՝ և Թռչունն. զի ասացին
Թէ ոչ տեսցէ Ած զՃանապարհս մեր:
*Ոտքեր ընթանան՝ և լքուցեն զքեզ. 5
զիա՞րդ կազմիցիս երիվարօք. իսկ արդ
յերկիրդ խաղաղութե յուսացեալ իցես.
զի՞ գործեսցես 'ի վերանալ յորդանան
գետոյ: *Քանզի և եղբարքն քո՝ և 6
տուն հօր քոյ. և նոքա դաւեցին քեզ.
և նոքին աղաղակեցին զկնի քո. կու-
տեցան 'ի վր քո. մի հաւատար նոցա.
զի խօսեսցին զքեն չարութի: *Լքի 7
զտուն իմ. Թողի զժառանգութի իմ:
Ետու զսիրելին անձին իմոյ 'ի ձեռս
Թշնամեաց իւրոց:*Եղև ժառանգու- 8
Թի իմ ինձ իբրև առիւծ յանտապա-
տի. ետ 'ի վր իմ զբարբառ իւր. վն
այնորիկ ատեցի զնա: *Միթէ որջ 9
բորենւո՞յ իցէ ժառանգութի իմ ինձ,
կամ այրք շուրջ զնովաւ. շրջեցայք,
ժողովեցէք զամ գազանս անապատի՝
և եկեսցեն ուտել զնա:*Հովիւք բա 10
զումք ապականեցին զայգի իմ: եղծին
զբաժ իմ. արարին զվիճակն իմ յան-
կալի յանապատ անկոխ: *Եդաւ յա 11
պականութի կորստեան. վն իմ ապա
կանեցաւ ապականութբ ամ երկիր.
զի ոչ գոյ մարդ՝ որ դնէ 'ի սրտի:
*Ի վր ամ ելս անապատի անցին Թշ- 12
ուառացեալք. զի սուր Տն կերիցէ 'ի
ծագաց մինչև 'ի ծագս երկրի. և ոչ
գոյր խաղաղութի ամենայն մարմնոյ:
*Յորեան սերմանեցէք. և մի փուշ 13
հնձեսջիք. և վիճակքն ձեր ոչ եղիցին
ձեզ յօգուտ. յամօթ լերուք 'ի պար-
ծանաց ձերոց 'ի նախատանաց առաջի
Տն: *Զի այսպէս ասէ Տր. վան ամ 14
դրացեաց չարաց. որք մերձենան 'ի
ժառանգութի իմ. զոր բաշխեցի ժո-
ղովրդեան իմոյ Իէլի. աՀաւասիկ ես
կորզեցից զնոսա յերկրէն իւրեանց. և
զտունն յուդայ Հանից 'ի միջոյ նոցա:
*Եւ եղիցի յետ Հանելոյն զնոսա՝ դար 15
ձայց՝ և ողորմեցայց նց. և բնակեցու-
ցից զնս իւրաքանչիւր 'ի ժառանգութե
իւրում. և իւրաքանչիւր յերկրի իւր
ում: *Եւ եղիցի, եթէ ուսանելով 16
ուսանիցին զՃանապարՀ ժողովրդեան
իմոյ երդնուլ յանուն իմ. Թէ կենդա
նի է Տր. որպ ուսուցին զժողովուրդ
իմ երդնուլ 'ի բաՀաղ. և շինեսցին 'ի
մէջ ժողովրդեան իմոյ:*Եւ եթէ ոչ 17
դառնայցեն՝ ջնջեցից զազգն զայն՝ և
բարձից կորստեամբ ասէ Տր:

Հրճեցա-/րուք, և/ ծաղրէ-/ցէք

և ծուղ/ հնչեցէք

## Գլ: ԺԳ:

Այսպէս ասէ ցիս. գնա, և ստացիր 1
քեզ զփածանելի կտաւի. և ած
զմիջով քով. և ի ջուր մի անցանիցես:
2 *Եւ ստացայ զփածանելի ըստ բանի
3 Տն. և ածի զմիջով իմով: *Եւ եղև
բան Տն առ իս կրկին անգամ՝ և ասէ:
4 *Առ զփածանելին՝ զոր ստացար 'ի
միջոյ քումմէ. և արի, գնա յափն եւ-
փրատայ. և Թաքուսցես զդա անդ 'ի
5 ծակ վիմի: *Եւ չոգայ՝ և Թաքուցի
զնա յեւփրատ՝ որպէս և պատուիրեաց
6 ինձ Տր: *Եւ եղև յետ բազում աւ-
ուրց՝ ասէ ցիս Տր. արի գնա յափն եւ-
փրատայ՝ և առցես անտի զփածանե-
լին՝ զոր Հրամայեցի քեզ անդ Թաքու
7 ցանել: *Եւ գնացի յափն եւփրատ
գետոյ՝ փորեցի՝ և առի զփածանելին
'ի տեղւոջէն՝ ուր Թաղեցի զնա անդ.
և աՀա ապականեալ էր սփածանե-
լին. և չէր ինչ իմիք պիտանացու:
8 *Եւ եղև բան Տն առ իս:
9 *Եւ ասէ. այսպէս ասէ Տր. այդպէս
ապականեցից զՀպարտութին յուդայ՝
10 և զՀպարտութին Եէմի: *Զքաղաքն՝
և զժողովուրդն իմ չար. որք ոչ կամին
լսել բանից իմոց. որք գնան ըստ յօ-
ժարութե սրտից իւրեանց չարաց. և
երԹան զՀետ աստուծոց օտարաց՝ ծա
ռայել նոցա՝ և երկիր պագանել. և
եղիցին իբրև զփածանելիդ զայդ՝ որ
11 ոչ ինչ իմիք է պիտանացու:*Զի զոր
օրինակ մածանի սփածանելի զմիջով՝
նոյնպէս մածուցի զինև զամ տունդ
Իէլի. և զամ տունդ յուդայ՝ ասէ Տր.
լինել ինձ 'ի ժողովուրդ անուանի. և
'ի պարծանս և 'ի փառս. և ոչ անսա-
12 ցին ինձ: *Եւ ասասցես ժողովր-
դեանդ զպատգամդ զայդ. այսպ ասէ
Տր Ած Իէլի. ամ տիկ գինեաւ լցցի.
և եղիցի եթէ ասիցեն ցքեզ. միթէ
չգիտիցե՞մք. եթէ տիկ գինեաւ լցցի:
13 *Եւ ասասցես ցնս. այսպէս ասէ Տր.
աՀա ես լնում զամ բնակիչս երկրիդ
այդորիկ. և զԹագաւորս որդիս դաւ-
Թի՝ որք նստին յաԹոռ նր. և զքաՀա
նայս՝ և զմարգարէս՝ և զյուդա՝ և
զամ բնակիչս Եէմի արբեցութբ:
14 *Եւ ցրուեցից զդոսա՝ և զեղբայր իւր.
և զՀայր և զորդիս իւրեանց 'ի միասին՝
ասէ Տր. ոչ կԹացայց, ոչ խնայեցից,
և ոչ ողորմեցայց ապականել զդոսա:
15 *Լուարուք՝ և ունկնդիր լերուք՝ և
մի Հպարտանայք՝ զի Տր խօսեցաւ:
16 *Տուք Տն Այ ձերում փառս. մինչև
խաւարեալ և գայԹագղեալ ոտից ձե
րոց 'ի վերայ խաւարին լերանց. ակն ու-
նէիք լուսոյ. և անդ ստուերք մաՀու.
17 և դնիցիք 'ի խաւարի: *Եւ եթէ ոչ
լուիցէք նմա. գաղտագողի լայցեն անձ
ինք ձեր յերեսաց Թշնամեաց. || և բր

Հայր և/ ՀՀԷայր/ Էր

|| Աղեոյ-/տա_ 1. 2.

տասունիցէք արտասուօք. և իջուսցեն աչք ձեր արտասուս. զի խորտակեցաւ հօտն Տն։ 18 *Ասացէք ցթագաւորն և ցբռնաւորն. թէ կործանեցարուք՝ և նստարուք. զի անկաւ ՚ի գլխոց ձերոց պսակ փառաց ձերոց։ 19 *Փակեցան քաղաքք՝ որք ընդ հարաւակողմն. և ոչոք էր՝ որ բանայր. գերեցաւ յուդա ըզ վախճանեալ գերութի. զկատարեալն հատուցմամն։ 20 *Ամբարձ զաչս քո երէմ. և տես զյարձակեալսդ ՚ի հիւսիսոյ. ուր է հօտն՝ որ տուաւ քեզ՝ խաշինք փառաց քոց։ 21 *Զի՞նչ տացես պատասխանի ՚ի ժամանակի, յորում պահանջիցին ՚ի քէն. դու իսկ ուսուցեր զնոսա ուսումն՝ տիրել ՚ի վերայ քո. ո՞չ հա երկունք ունիցին զքեզ իբրև կնոջ ծննդականի։ 22 *‖Եւ եթէ ասիցես ՚ի սրտի քում. ընդէ՞ր պատահեցաւ ինձ այս. վն բազմութե անօրէնութե քոյ յետուստ քո խայտառակել զկրկունս քո։ 23 *Եթէ փոխիցէ հնդիկ զմորթ իւր. և ինձ զխայտուց իւր. և դուք լինիցիք կարօղք գործել զբարիս, ուսեալքդ զչարիս։ 24 *Եւ ցրուեցի զնս իբրև զխուիճ հողմակոծեալ յանապատի։ 25 *Այդ է վիճակ քո՝ և մասն չհաւանելդ ձեր ինձ. զի մոռացար զիս՝ և յուսացար ՚ի ստութիւն։ 26 *Եւ ես մերկացից զյետուստ քո. և արկից զերեսօք քովք՝ և երևեսցին անարգանք քո 27 *Շնութի և վրնջիւն քո՝ և օտարանալն յինէն պոռնկութե քով. ՚ի բագինս և յաղանդս տեսի զգարշելիս քո. վայ քեզ երէմ՝ զի ոչ սրբեսցիս զկնի իմ. մինչև ցե՞րբ իցէ քեզ այդ։

‖Ամայ. 30. 14.

Բազում յետուստ քո

## ԳԼ: ԺԴ:

1 Եւ եղև բան Տն առ երեմիայ վն երաշտութե անձրևի։ 2 *Սուգ էառ հրէաստան. և դրունք նորա թափուրք եղեն. խաւարեցան ՚ի վր երկրի. և աղաղակն երէմի բարձրացաւ։ 3 *Եւ մեծամեծք նր առաքեցին զերիտասարդս իւրեանց զջրոց. եկին ՚ի ջրհորս, և ո՛չ գտին զջուր. դարձուցին ունայն զամանս իւրեանց. ամաչեցին՝ յամօթ եղեն՝ և ծածկեցին զգլուխս իւրեանց։ 4 *Եւ գործ երկրին պակասեցաւ. զի ո՛չ գոյր անձրև ՚ի վր երկրի. յամօթ եղեն մշակք. ծածկեցին զգլուխս իւրեանց։ 5 *Եւ եղինք ՚ի վայրի ծնան. և թողին զծնունդս, զի ո՛չ գոյր բանջար։ 6 *Եւ ցիռք ՚ի դաշտս ծծեցին զօդս իբրև զվիշապս. և սորեցին աչք իւրեանց. զի ո՛չ գոյր խոտ։ 7 *Եթէ մեղք մեր հակառակ կացին մեզ. դու Տր արա վն անուանդ քո. զի բազումք են մեղք մեր առաջի քո՝ 8 քեզ մեղաք։ *Ակնկալութիւդ իմի. Տր փրկեա զմեզ ՚ի ժամանակի չարեաց. ընդէ՞ր եղև իբրև զպանդուխտ յերկրի. կամ իբրև զբնակ երկրի՝ որ դառնայցէ յօթևանս։ 9 *Մի թէ իցես իբրև զմարդ որ ննջէ. կամ՝ իբրև զայր. որ ոչ կարէ ապրեցուցանել. և դու ՚ի միջի մերում ես Տր. և անուն քո կոչեցեալ է ՚ի վր մեր. մի մոռանար 10 զմեզ։ *Այսպէս ասէ Տէր ժողովրդեանդ այդմիկ. այնչափ սիրեցին շարժել զոտս իւրեանց՝ և ո՛չ խնայեցին. և Ած ո՛չ հաճեցաւ ընդ նոսա. արդ յիշեսցէ զանիրաւութիւն նոցա. և այց 11 արասցէ մեղաց նոցա։ *‖Եւ ասէ ցիս Տր. մի կար յաղօթս վասն ժողովր-12 դեանն այնորիկ ՚ի բարիս։ *Զի թէ պահեսցեն, ո՛չ լուայց խնդրուածոց նոցա. և եթէ մատուսցեն զողջակէզս՝ և զոհս, ո՛չ հաճեցայց ընդ այն. զի սրով և սովով և մահուամբ սպառե-13 ցից զնոսա։ *Եւ ասեմ ո՛վ որ եսդ Տր Տր. ահա մարգարէքն ասեն նց՝ ‖եթէ ոչ տեսջիք զսուր. և սով ոչ եղիցի ՚ի միջի ձերում. զի ճշմարտութի և խաղաղութի տացի ՚ի վերայ երկրի. և ՚ի 14 տեղւոջդ յայդմիկ։ *Եւ ասէ ցիս Տր սուտ մարգարէանան մարգարէքն յանուն իմ. ո՛չ առաքեցի զնս. և ո՛չ պատուիրեցի նց. և ո՛չ խօսեցայ ընդ նոսա. զի տեսիլս սուտս և ըղձութիւս՝ և հմայս՝ և զկամս սրտից իւրեանց մարգարէա-15 նան նոքա ձեզ։ *Վասն այնորիկ այսպէս ասէ Տր ՚ի վր մարգարէիցն՝ որք մարգարէանան յանուն իմ. և ես ո՛չ առաքեցի զնոսա. և ո՛չ պատուիրեցի նոցա. որք ասեն՝ թէ սուր՝ և սով ո՛չ եղիցի յերկրիս յայսմիկ. յախտ ծիւրական մահու. և ՚ի սուր և ՚ի սով սպա-16 ռեսցին մարգարէքն այնոքիկ։ *Եւ ժողովուրդն՝ որոց նոքայն մարգարէանան՝ եղիցին ընկեցեալք յանցս երէմի յերեսաց սրոյ՝ և սովու. և ոչո՛ք իցէ՝ որ թաղիցէ զնս. ինքեանք՝ և կանայք իւրեանց. և ուստերք՝ և դստերք նց. և հեղից ՚ի վր նոցա զչարիս իւրեանց։ 17 *Եւ ասասցես ցնս զայս բան. ‖Իջուցէք ընդ աչս ձեր արտասուս ՚ի տուէ և ՚ի գիշերի, և մի պակասեսցին. զի բեկմամբ մեծաւ բեկաւ կոյս դուստր ժողովրդեան իմոյ. և ցաւագին հա-18 րուածովք յոյժ։ *Եթէ ելից ՚ի դաշտ՝ ահա վիրաւորք սրոյ. և եթէ մտից ՚ի քաղաք, ահա ցաւք սովու. զի մարգարէ՝ և քահանայ գնացին յերկիր՝ զոր 19 ո՛չ գիտէին։ *Մի թէ խոտելով խոտեցեր զյուդայ. կամ վերանալով

‖Եր. 7. 16.

‖Եր. 23. 17.

‖Եր. 1. 16. 2. 18.

վէ_

վերայ անձն քո. ընդէ՞ր հարեր զմեզ. և ոչ գոյր մեր բժշկութիւն. Ակնկալաք խաղաղութեան, և ոչ գոյր բարութի՛ւն. ժամանակի բժշկութեան, և ահա խռովութիւն: *Ծանեաք Տր զմեղս մեր. 20 և զանիրաւութիւնս հարց մերոց. զի մեղաք առաջի քո: *Դադարեա՛ վասն 21 անուան քոյ՝ մի կորուսաներ զաթոռ փառաց քոց. յիշեա՛, մի՛ ցրեր զուխտ քո՝ որ ընդ մեզ: *Միթէ իցէ՞ ոք 'ի 22 հեթանոսաց՝ որ տեղայցէ. կամ թէ երկինք տայցեն զլրումն իւրեանց. ո՞չ ապաքէն դու ես նոյն Տր Ած մեր՝ և ակնկալցուք քեզ. զի դու արարեր զայս ամենայն:

|| Երեմ. 8.15.

## ԳԼ: ԺԵ:

1 Եւ ասէ ցիս Տր. եթէ կացցէ Մովսէս և Սամուէլ առաջի երեսաց իմոց. ոչ եղիցի անձն իմ ընդ նոսա. 'ի բաց արձակեա զժողովուրդդ զայդ յերեսաց իմոց՝ և ելցեն: *Եւ եղիցի 2 եթէ ասիցեն ցքեզ՝ յո՞ւր ելցուք. ասասցես ցնոսա՝ այսպէս ասէ Տր՝ || որք 'ի մահ, 'ի մահ. և որք 'ի սուր, 'ի սուր. և որք 'ի սով, 'ի սով. և որք 'ի գերութիւն, 'ի գերութիւն: *Եւ խնդրեցից զվրէժ 'ի 3 նոցանէ չորիւք օրինակօք՝ ասէ Տէր. զսուր 'ի սպանանել. և զշունս 'ի պատառել. և զթռչունս երկնից՝ և զգազանս երկրի յուտել և յապականել: *Եւ մատնեցից զնոսա 'ի վտանգ ամ 4 թագաւորութեանց երկրի. || վն Մանասէի որդւոյ Եզեկիայ թագաւորին յուդայ՝ և վասն ամենայնի. զոր արար յԷմ: *Ո՛ խնայեսցէ 'ի քեզ Էմ. և ո՛վ տրտմեսցի 'ի վերայ քո. կամ ո՛վ դարձցի 'ի 5 հարցանել զխաղաղութէ քումմէ: *Դու դարձար յինէն՝ ասէ Տր. և 6 յետս երթիցես. և ձգեցից զձեռն իմ 'ի վերայ քո՝ և ապականեցից զքեզ. և ոչևս անսացից նց: *Եւ ցրուեցից զնս 7 'ի սփիւռս. 'ի դրունս ժողովրդեան իմոյ անզաւակեցան: զի կորուսի զժողովուրդ իմ վն չարեաց իւրեանց. և ոչ դարձան: *Բազմացան զինեն այրիք 8 նոցա քան զաւազ ծովու. ածի 'ի վր նոցա՝ և 'ի վերայ մօրն զերիտասարդս, թշուառութիւն 'ի միջօրէի. արկի զնոսա, երկն յանկարծակի դողումն և տագնապ: *|| Նուաղեաց եօթնածինն. ձանձրացաւ անձն նր. || Եմուտ 9 նմա արև զմիջօրէիւ. եղև յամօթ և 'ի նախատինս: զմնացորդս նոցա տաց 'ի սուր առաջի թշնամեաց նց. ասէ Տր: *Վա՜յ ինձ մայր իմ. իբրև զո՞ ոք ծնար 10 զիս՝ այր դատափետեալ և ձգեալ 'ի դատաստան յամ երկրի. ոչ պարտեմ ինչ՝ և ոչ պարտի ոք ինչ ինձ. և զօրութիւն իմ պակասեցաւ՝ յանիծողաց իմոց:

|| Զաք. 11. 9.
|| 4 Թագ. 21.11.
|| 1 Թագ. 2. 5.
|| Ամովս 8. 9.

11 *Եղիցի Տր՝ և յաջողեսցի նց 'ի բարութիւս. եթէ ոչ կամիցի առաջի քո 'ի ժամանակի չարեաց նոցա. և 'ի ժամանակի նեղութեան նց 'ի բարիս ընդդէմ թշնամւոյ: 12 *Իցէ թէ ճանաչիցի երկաթ. և քաղաք որմն պղնձի զօրութիւն 13 քո: *Եւ զգանձս քո տաց աւարի փր կանս վն ամ մեղաց քոց՝ յամ սահմանս 14 քո: *Եւ ծառայեցուցից զքեզ թշնամեաց քոց յերկրի՝ զոր ոչ գիտիցես. զի հուր վառեալ է 'ի սրտմտութէ իմմէ. 15 'ի վերայ ձեր բորբոքեսցի: *Դու գիտես Տր. յիշեա՛ զիս. այց արա ինձ. անպարտ արա զիս 'ի հալածչաց իմոց. և մի յերկարեր վն իմ. ծանի՛ր որչափ 16 առի վն քո նախատինս: *Յարհամարհանաց բանից քոց վախճանեա՛ զնս. և եղիցի բան քո ինձ յուրախութի և ցնծութի սրտի իմոյ. զի կոչեցեալ է անուն քո 'ի վր իմ Տր, Ած ամենա- 17 կալ: *|| Ոչ նստայ յատեանս սպառնողաց. այլ սարսէի յերեսաց ձեռին քոյ՝ առանձին նստէի. զի լցայ դառնութբ: 18 *|| Ընդէ՞ր որք տրտմեցուցանեն զիս, զօրանան. և վէրք իմ սաստիկք, ուստի՞ բժշկեսցիմ. լինելով եղև ինձ իբրև զջուր ցուրտ՝ յորում ոչ գոյ հաւատ: 19 *Վասն այդորիկ այսպէս ասէ Տր՝ եթէ դարձցիս՝ այսրէն՝ պատսպարեցից ըզքեզ. և առաջի երեսաց իմոց կացցես. և եթէ հանցես զպատուականն յանարգէ, իբրև զբերան իմ եղիցիս. և եթէ դարձցին նոքա առ քեզ. և ոչ դու 20 դարձցիս առ նոսա: *Տաց զքեզ ժողովրդեանդ այդմիկ 'ի պարիսպ պղնձի ամուր: մարտիցեն ընդ քեզ. և ոչ կարիցեն սանանել. զի ընդ քեզ եմ ապրեցուցանել՝ և 'ի փրկել զքեզ. ասէ 21 Տր: *Եւ զերծուցից զքեզ 'ի ձեռաց չարաց. և փրկեցից զքեզ 'ի ձեռաց ժանտաց՝ ասէ Տր Ած իսրայէլի:

|| Սաղմ. 1. 1. և 25.4.
|| Երեմ. 30.15.

## ԳԼ: ԺԶ:

1 Եւ եղև բան Տն առ իս, ասելով: 2 *Եւ դու մի առնուցուս քեզ կին. և մի ծնցին քեզ ուստերք՝ և դստերք՝ 3 'ի տեղւոջդ յայդմիկ: *Եւ վն մարց նոցա՝ որք ծնանին զնոսա. և վն հարց նոցա՝ որք ծնան զնոսա յերկրիդ յայդմիկ: 4 *Մահուամբ ախտից մեռցին. մի կոծեսցին՝ և մի թաղեսցին. այլ խայտառակ եղիցին ընդ երեսս երկրի. սրով անկցին. և սովու սպառեսցին. և եղիցին դիակունք նց 'ի կերակուր թռչնոց երկնից և գազանաց երկրի: 5 *Այսպէս ասէ Տր. յաշխարհումն նց

մի

մի՛ մտանիցես. և 'ի կոծ նոցա մի՛ երթիցես. և սուգ 'ի վր նց մի՛ առնուցուս. զի 'ի բաց արարի զխաղաղութի իմ 'ի ժողովրդենէն յայսմանէ՝ ասէ Տր, զողորմութիս՝ և զգթութիս: 6 *Եւ մեռանիցին մեծամեծք՝ և փոքունք յերկրի յայսմիկ. մի՛ կոծեսցեն՝ և մի՛ ցեռեսցին. և մի՛ խզեսցին. և մի՛ լացցեն. և մի՛ թաղեսցին: 7 *Եւ մի՛ բեկցի հաց սգոյ նոցա 'ի մխիթարութի 'ի վերայ մեռելոց. և մի՛ արբուսցեն զբաժակ մխիթարութե 'ի վր հօր իւրոյ՝ և մօր իւրոյ: 8 *'Ի տուն ըմպելեաց մի՛ մտանիցես նստել ընդ նս ուտել՝ և ըմպել: 9 *Զի այսպէս ասէ Տր զօրութեց՝ Աստուած Իէլի. ահաւասիկ ես խափանեցից 'ի տեղւոջէդ յայդմանէ առաջի աչաց ձերոց՝ և 'ի ձեր իսկ աւուրս. զձայն ցնծութե՝ և զձայն ուրախութե. և զձայն փեսայի՝ և զձայն հարսին: 10 *Եւ եղիցի՝ յորժամ պատմեսցես ժողովրդեանն այնմիկ զամ պատգամսդ զայդոսիկ, և ասասցեն քեզ. ‖ընդէ՞ր խօսեցաւ Տր 'ի վր մեր զայդ ամ չարիս մեծամեծս. զինչ անիրաւութի է 'ի մեզ. կամ որպիսի մեղք՝ զոր մեղաք առաջի Տն Այ մերոյ: 11 *Եւ ասասցես ցնս. փոխանակ զի թողին զիս հարքն ձեր՝ ասէ Տր. և գնացին զհետ աստուծոց օտարաց. և ծառայեցին նոցա. և երկիրպագին նոցա՝ և զիս թողին. և զօրէնս իմ ոչ պահեցին: 12 *‖Եւ դուք անզգամեցայք առնել առաւել քան զհարսն ձեր. և ահաւասիկ դուք երթայք իւրաքանչիւր զհետ հաճոյից սրտից ձերոց չարաց. առ 'ի չլսել ինձ: 13 *Եւ ընկեցից զձեզ յերկրէդ յայդմանէ յերկիր՝ զոր ոչ գիտիցէք դուք և հարք ձեր. և ծառայեսջիք անդ աստուծոց օտարաց. 'ի տուէ և 'ի գիշերի. և ոչ արասցեն ձեզ զողորմութի: 14 *‖Վն այնորիկ ահա աւուրք գան ասէ Տր. և ոչ ևս ասասցեն՝ կենդանի է Տէր՝ որ էհան զորդիսն Իէլի յերկրէն եգիպտացւոց: 15 *Այլ թէ կենդանի է Տր. որ էհան զորդիսն Իէլի յերկրէն հիւսիսոյ. և յամ աշխարհաց՝ ուր և մերժեցան անդր. և պատսպարեսցէ զնս անդրէն յերկիրն իւրեանց՝ զոր ետ հարց նց: 16 *Ահաւասիկ ես առաքեմ ձկնորսս բազումս՝ ասէ Տէր. և որսասցեն զնոսա. և յետ այնորիկ առաքեցից որսորդս բազումս. և որսասցեն զնս. 'ի վր ամ լերանց՝ և 'ի վր ամ բլրոց՝ և 'ի ծակուց վիմաց. 17 *Զի աչք իմ 'ի վերայ ճանապարհաց նոցա՝ և ոչ թաքեան յերեսաց իմոց. և ոչ ծածկեցան անիրաւութիւնք նոցա առաջի աչաց իմոց: 18 *Եւ հատուցից նախ կրկին զանօրէնութիս նց. և զմեղս նց՝ որովք պղծեցին զերկիր իմ մեռելոտովք զարշելեացն իւրեանց. և անիրաւութեք նոցա՝ որովք լցին զժառանգութի իմ: 19 *Տր զօրութի իմ՝ և օգնականութի իմ, և ապաւէն իմ յաւուր չարեաց. առ քեզ հեթանոսք եկեսցեն 'ի ծագաց երկրի՝ և ասասցեն. որպէս սուտ գործէին հարքն մեր կուռս. և ոչ գոյր օգուտ 'ի նոցանէն: 20 *Եթէ առնիցէ մարդ անձամբ անձին աստուածս՝ և ոչ նոքա են աստուածք: 21 *Վան այնորիկ ահաւասիկ ես ցուցից նոցա 'ի ժամանակի յայսմիկ զձեռն իմ. ծանուցից նոցա և զզօրութի իմ. և գիտասցեն՝ թէ անուն իմ Տր է:

‖Եր. 5.19. ‖Եր. 7.26. ‖Եր. 23.8.

## ԳԼ: ԺԷ:

1 Մեղքն յուդայ գրեալ են գրչաւ երկաթեաւ անդամանդեայ եղեգամբ. մածեալ է 'ի տախտակս սրտից նոցա. և յեղջերս սեղանոց ձերոց: 2 *'Ի ժամանակի յորժամ յիշեսցեն որդիք նոցա զսեղանս իւրեանց՝ և զանտառս իւրեանց. 'ի վերայ ծառոց վարսաւորաց՝ և 'ի վերայ բլրոց բարձանց: 3 *Եւ 'ի վր լերանց վայրի. զզօրութի քո. և զամ զգանձս քո բաշխեցից յաւարի: զբարձունս քո մեղօք յամ սահմանս քո: 4 *Եւ լքջիր՝ և նկուն լիջիր 'ի ժառանգութե քումմէ՝ զոր ետու քեզ: և հանից զքեզ 'ի ձեռս թշնամեաց քոց յերկիր՝ զոր ոչ գիտիցես. զի հուր վառեալ է 'ի սրտմտութե իմում. մինչև յաւիտեանս բորբոքեսցի: 5 *Այսպէս ասէ Տր: ‖անիծեա՛լ լիցի մարդ՝ որ արասցէ զյոյս իւր 'ի մարդ. և ապաստան լիցի 'ի մարմին բազկի նր. և ապստամբեսցի 'ի Տէ սիրտ նորա: 6 *‖Եւ եղիցի իբրև զմացառ վայրի յանապատի. և մի՛ տեսցէ, յորժամ գայցէ բարութի. և բնակեսցի յաղտաղտուկս անապատի. յերկիր աղտաղտուկ ուր ոչ երբեք բնակիցի: 7 *Եւ օրհնեալ լիցի մարդն՝ որ յուսացաւ 'ի Տր. և եղիցի Տր յոյս նորա: 8 *‖Եւ եղիցի իբրև զծառ զոր արձակեալ 'ի գնացս ջուրց. և ընդ գնացս ջուրցն ձգտեցուսցէ զարմատս իւր. և մի՛ երկիցէ՝ յորժամ հասանիցէ տօթ: և եղիցի ստեղն նորա անտառացեալ շուրջ զնովաւ. յամի երաշտութե մի՛ երկիցէ. և մի՛ կասեսցի 'ի տալոյ զպտուղ: 9 *Խորին է սիրտ քան զամ. և մարդ է՝ ո՞վ ծանիցէ զնա: 10 *‖Ես Տր՝ քննեմ զսիրտս՝ և փորձեմ ‖զերիկամունս. տալ իւրաքանչիւր ըստ ճանապարհաց իւրոց. և ըստ պտղոյ գոր-

‖Եսայ. 30.2. և 31.1. ‖Եր. 48.6. ‖Սաղ. 1.3. ‖Յայտ. 2.23. ‖Մտթ. 7.10.

գործոց իւրոց ։ *Ձայն արար կաքաւ. 11
ժողովեաց զոր ոչ իւր ծնեալ ։ որ ժո_
ղովէ զմեծութիւն առանց իրաւանց ․
'ի կէս աւուրց իւրոց թողցէ զնա ․ և 'ի
վախճանի իւրում եղիցի անզգամ ։
*Աթոռ փառաց բարձրացեալ 'ի սկզ 12
բանէ, տեղի սրբութեան մերոյ ։ *Ակն 13
կալութիւն Իէլի Տր ։ ամենեքին որք թո
ղին զքեզ՝ ամաչեսցեն ․ հեռացեալքն
յերկրի գրեսցին ․ զի թողին զՏէր
զաղբեւր ջուրց կենաց ։ *Բժշկեա զիս 14
Տր, և բժշկեցայց ․ փրկեա զիս՝ և փր_
կեցայց ․ զի պարծանք իմ դու ես ։
*Ահաւանիկ նոքա ասեն ցիս ․ ո՞ւր է 15
բանն Տն եկեսցէ այսր ։ *Բայց ես ոչ 16
ձանձրացայց գալ զկնի քո ․ և աւուր
մարդոյ ոչ ցանկացայ ։ դու ինքն գի_
տես՝ որ ինչ ելանէ ընդ շրթունս իմ,
առաջի երեսաց քոց է ։ *Մի լինիր ինձ 17
յօտարոտի ․ խնայեա դու յիս յաւուր
չարի ։ *Յամօթ լիցին հալածիչքն իմ ։ 18
և մի եւս ես ամաչեցից ։ զարհուրեսցին
նոքա՝ և մի եւս ես զարհուրեցայց ։ ած
'ի վ՟ր նոցա օր չար ․ կրկին բեկմամբ
բեկ զնոսա ։ *Այսպէս ասէ ցիս Տր ․ 19
երթ՝ կաց 'ի դրունս ժողովրդեան քոյ՝
ընդ որս մտանեն, և ելանեն թագաւ_
որքն յուդայ ․ և յա՟մ դրունս եէմի ։
*Եւ ասասցես ցնս ։ լուարո՛ւք զպատ 20
գամ Տն թագաւորք յուդայ ․ և ա՟մ
հրեաստան՝ և ա՟մ բնակիչք եէմի ․ որք
մտանէք ընդ դրունդ այդոսիկ ։
*Այսպէս ասէ Տր ․ զգո՛յշ լերուք ան 21
ձանց ձերոց ։ մի բառնայք բեռն յաւ
ուր շաբաթուց ․ և մի ելանէք ընդ
դրունս եէմի ։ *Եւ մի հանէք բե_ 22
ռինս 'ի տանց ձերոց յաւուր շաբաթուց ․
և զա՟մ գործ մի գործէք ․ և սրբեցէք
զօր շաբաթուց, ո՟րպէս պատուիրեցի հարց
ձերոց ։ *Եւ ոչ լուան ․ և ոչ խոնար_ 23
հեցուցին զունկն իւրեանց ․ և խստա_
ցուցին զպարանոցս իւրեանց առաւել
քան զհարսն իւրեանց առ 'ի չլսելոյ
ինձ՝ և չընդունելոյ զխրատ ։ *Եւ եղի 24
ցի՝ եթէ լսելով լուիջիք ինձ՝ ասէ Տր ․
չբերել բեռն ընդ դրունս քաղաքիս
այսորիկ յաւուր շաբաթուց ․ և սրբել
զօրն շաբաթուց ․ չգործել 'ի նմա զա՟մ
գործ ։ *Եւ մտցեն ընդ դրունս քաղա 25
քիդ այդորիկ թագաւորք և իշխանք՝
որք նստիցին յաթոռն դաւթի ․ և ելա
նիցեն 'ի կառս և յերիվարս իւրեանց
իշխանք նց՝ արք յուդայ՝ և բնակիչք
եէմի ․ և բնակեսցի քաղաքդ այդ յաւի
տեան ։ *Եւ եկեսցեն 'ի քաղաքացն 26
յուդայ շուրջանակի յեէմ, և 'ի բե_
նիամինէ ․ և 'ի դաշտականաց՝ և 'ի լեռ
նակողմանց ։ և 'ի կողմանց հիւսիսոյ
բերել ողջակէզս՝ և խունկս՝ և մանա_
նայ ․ և կնդրուկ ․ մատուցանելով օրհ
27 նութիւն 'ի տան Տն ։ *Ապա թէ ոչ լուի
ջիք ինձ սրբել զօրն շաբաթուց՝ բառ_
նալ զբեռն՝ և մտանել ընդ դրունս
եէմի յաւուր շաբաթուց ․ վառեցից
զհուր 'ի դրունս նր՝ և կերիցէ շուրջ
զերուսաղէմաւ, և մի շիջցի ։

## ԳԼ ։ ԺԸ ։

1 Բանն որ եղև առ երեմիայ 'ի Տէ
2 և ասէ ։ *Արի, և էջ՝ 'ի տուն բր_
3 տին ․ և անդ լուիցես զբանս իմ ։ *Իջի
'ի տուն բրտին ․ և ահա նա գործէր 'ի
4 'ի վերայ վիմաց ։ *Եւ անկաւ աման մի
զոր ինքն գործէր 'ի կաւոյն, 'ի ձեռաց
նր ։ և դարձեալ արար զնա այլ աման
որպէս հաճոյ եղև առաջի նր առնել ։
5 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։
6 *‖Եթէ իբրև զբրուտդ զայդ ո՞չ կա_ ‖ Եսայ.
րիցեմ առնել զձեզ տունդ Իէլի՝ ասէ 45. 9.
Տր ։ ահաւադիկ իբրև զկաւդ 'ի ձեռս Հռոմ.
բրտիդ ․ այդ՟պէս էք 'ի ձեռս իմ տունդ 9.20.
7 Իէլի ։ *Եթէ վախճան խօսեցայց 'ի Եբրէ յան
վերայ ազգի՝ կամ թագաւորութեան ․ կարծ
‖բառնալ զնոսա՝ և քակել՝ և կորուս ‖ Եր.
8 անել ։ *Եւ դարձցի ազգն այն 'ի չա_ 1. 10.
րեաց իւրեանց՝ զորոց խօսեցայ 'ի վ՟ր
նոցա ․ զղջացայց և ես 'ի վ՟ր չարեացն՝
9 զոր խորհեցայ առնել նց ։ *Եւ եթէ յանկար_
վախճան խօսեցայց ազգի և թագաւո ծակէ
10 րութեան շինել և տնկել ։ *Եւ արաս_
ցեն չարիս առաջի իմ ․ չլսել բարբա_
ռոյ իմոյ ․ զղջացայց և 'ի վ՟ր բարեացն՝
11 զոր խօսեցայ առնել նց ։ *Եւ արդ խօ
սեաց ընդ արս յուդայ՝ և ընդ բնա_
կիչս եէմի ․ և ասասցես ։ այսպէս ասէ
Տր ․ ‖ ահաւադիկ ես նիւթեմ 'ի վ՟ր ‖ Եր.
ձեր չարիս ։ և խորհիմ 'ի վ՟ր ձեր խոր_ 25. 5. և
հուրդ ։ ‖ արդ դարձցի իւրաքանչիւր 35. 15.
ոք 'ի ճանապարհէ իւրմէ չարէ ․ և ու_ ‖ Յովն.
ղի՛ղ արարէք զգնացս ձեր՝ և զճանա_ 3. 8.
12 պարհս ձեր ։ *Եւ ասեն, քաջացուք՝
զհետ ապստամբութեանց մերոց գնաս_
ցուք ․ և իւրաքանչիւր զհաճոյս սրտի
13 իւրեանց չարի արասցուք ։ *Վա՜ այդո
րիկ այսպէս ասէ Տր ։ արդ՝ ա՛ղէ հար_
ցէք ընդ ազգս ։ ո՞վ ոք լուաւ զայնպիսի
արհաւիրս ․ զոր արար յոյժ կոյսն Իէլի ։
14 *Միթէ պակասեսցի՞ն ստինք 'ի վի_
մէ ․ կամ ձիւն 'ի լիբանանէ ․ կամ թէ
դառնայցեն ջուրք բռնութեամբ 'ի սաստ
15 կութենէ հողմոյ ։ *Զի մոռացաւ
զիս ժողովուրդ իմ ․ տարապարտուց
արկին խունկս ․ և տկարասցին 'ի ճա_
նապարհս իւրեանց ․ 'ի շաւիղս յա_
ւիտենից՝ ելանել 'ի շաւիղս, ուր ոչ
իցէ ճանապարհ գնալոյ ։

*Ար_

‖ Ստոր. 19. 8. և 49. 13. և 50. 13

16 * ‖ Կարգել զերկիր նց յապականութի և ՚ի շչիւն յաւիտենից. ամենեքին որք անցանիցեն ընդ այն՝ զարմասցին, և շարժեսցեն զգլուխս իւրեանց։

17 * Իբրև զհողմ տապախառն ցրուեցից զնս առաջի թշնամեաց իւրեանց ՚ի պարանոցս. և ոչ յերեսս ցուցից նց զօրն կորստեան։

18 * Եւ ասացին՝ եկայք, խորհեսցուք զխորհուրդ ՚ի վերայ Երեմիայի. զի ոչ կորնչին օրէնք ՚ի քահանայէ. և խորհուրդք յիմաստնոյ. և բան ՚ի մարգարէէ. եկայք՝ և հարցուք զնա լեզուաւ՝ և ոչ լուիցուք զամ բանս նորա։

19 * Լուր ինձ Տր. և անսա բարբառոյ իրաւանց իմոց։

20 * Եթէ հատուսցանիցի չար փոխանակ բարւոյ. զի խորհեցան ՚ի միասին բանս զանձնէ իմմէ. և զտանջանս իւրեանց թաքուցին յինէ. յուշ լիցի քեզ ՚ի կալն իմում առաջի քո. խօսիլ վս նոցա զբարութի. դարձուցանել զսրտմտութի քո ՚ի նոցանէ։

21 * Վս այնորիկ տուր զորդիս նց ՚ի սով. և ժողովեա զնս ՚ի ձեռս սրոյ. և եղիցին կանայք նոցա անորդիք՝ և այրիք։ և արք նց եղիցին կոտորեալք մահուամբ. և երիտասարդք սրով ՚ի պատերազմի։

22 * Եղիցի ճիչ ՚ի տունս նոցա. զի ածցես ՚ի վր նց յանկարծակի աւազակս։ զի բանս ՚ի գործ արարին ունիլ զիս. և որոգայթս թաքուցին ինձ։

23 * Եւ դու Տէր գիտացեր զամ խորհուրդս նց զինէն ՚ի մահ։ մի քաւեսցես զանիրաւութիս նոցա. և զմեղս նոցա յերեսաց քոց մի ջնջեսցես. եղիցի հիւանդութի նոցա առաջի քո. ՚ի ժամանակի սրտմտութե քոյ արա ՚ի նոսա։

## ԳԼ. ԺԹ.

1 Յայնժամ ասէ ցիս Տր. երթ ստասցիր քեզ կուժ մի ստեղծեալ ՚ի կաւոյ. և ածցես ՚ի ծերոց ժողովրդեանն. և ՚ի ծերոց քահանայիցն։

2 * Եւ ելցես ՚ի գերեզմանս որդւոցն նոցա՝ որ է առաջի մտից դրանն քարսիդայ. և ընթերցցիս անդ զամ զբանս՝ զոր խօսեցայց ընդ քեզ։

3 * Եւ ասասցես ցնոսա։ լուարուք զպատգամ Տն թագաւորք յուդայ. և արք Հրէաստանի՝ և բնակիչք Եմի. այսպէս ասէ Տր զօրութեց՝ Ած Իէլի. ահաւադիկ ես ածից ՚ի վր տեղւոյդ այդորիկ չարիս. որպէս զի ամի որ լուիցէ՝ հնչեսցեն ականջք իւր։

4 * Փոխանակ զի թողին զիս՝ և օտարացուցին զտեղիս զայս յինէն. և արկանէին ՚ի նմա խունկս աստուծոց օտարաց՝ զորս ոչ գիտէին ինքեանք՝ և հարք իւրեանց. և թագաւորք յուդայ լցին զտեղիս զայս արեամբ անմեղաց։

5 * Եւ շինեցին բագինս բահաղու այրել զորդիս իւրեանց հրով՝ ողջակէզս բահաղու. զոր ոչ պատուիրեցի. և ոչ խօսեցայ. և ոչ ածի զմտաւ ՚ի սրտի իմում։

6 * Վս այդորիկ ահա աւուրք գան՝ ասէ Տր. և ոչ ևս կոչեսցի անուն տեղւոյդ այդորիկ գլորումն՝ և գերեզման որդւոյն Ենովմայ. այլ ձոր կոտորածի։

7 * Եւ խափանեցից զխորհուրդն յուդայ. և զխորհուրդն Եմի ՚ի տեղւոջն յայնմիկ. և արկից զնոսա սրով առաջի թշնամեաց իւրեանց. և ՚ի ձեռս խնդրողաց անձանց նոցա. և տաց զդիակունս նց ՚ի կերակուր թռչնոց երկնից՝ և գազանաց երկրի։

8 * ‖ Եւ կարգեցից զքաղաքն զայն յապականութի, և ՚ի շչիւն. ամ որ անցանիցէ ընդ նա, տրտմեսցի. և շչեսցէ ՚ի վր ամ հարուածոց նորա։

‖ Վեր. 18. 16. ‖ Ստոր. 49. 13. և 50. 13

9 * Եւ կերիցեն զմարմինս ուստերաց՝ և զմարմինս դստերաց իւրեանց. և իւրաքանչիւր զմարմինս ընկերի իւրեանց ՚ի նեղութե և ՚ի պաշարման. զոր պաշարեսցին զնոսա թշնամիք իւրեանց.

10 որք խնդրէին զանձինս նց։ * Եւ խորտակիցես զկուժն առաջի արանցն՝

11 որք ելանիցեն ընդ քեզ։ * Եւ ասասցես ցնս։ այսպէս ասէ ցիս Տր զօրութեց. այդպէս խորտակեցից զժողովուրդ զայդ՝ և զքաղաքդ, որպ խորտակի աման խեցեղէն. որ ոչ կարիցէ միւսանգամ բժշկիլ. և ՚ի տափէթ թաղեսցին առ ՚ի չգոյէ տեղւոյ թաղելոյ։

12 * Այսպէս արարից տեղւոյդ այդմիկ ասէ Տր. և բնակչացդ որք ՚ի դմա. տալ զքաղաքդ զայդ ՚ի գլորումն։

13 * Եւ եղիցին տունք Եմի, և տունք թագաւորացն յուդայ՝ իբրև տեղի գլորելոյ. վս պղծութեցն՝ զորս արարին յամ տունս. յորս արկանէին խունկս ՚ի վր տանեաց իւրեանց՝ ամ զօրութեց երկնից. և նուիրէին նուէրս աստուծոց օտարաց։

14 * Եւ եկն Երեմիա ՚ի գլորմանէ տափեթայ՝ ուր առաքեաց զնա Տր անդր մարգարէանալ. և եկաց ՚ի սրահի տանն Տն՝ և ասէ ցամ ժողովուրդն։

15 * Այսպէս ասէ Տր զօրութեց Ած Իէլի. ահաւադիկ ես ածեմ ՚ի վր քաղաքիդ այդորիկ՝ և ՚ի վերայ ամ քաղաքաց դորա՝ և աւանաց զամ չարիս՝ զոր խօսեցայ ՚ի վերայ դորա. զի խստացուցին զպարանոցս իւրեանց՝ չլսել բանից իմոց։

## ԳԼ. Ի.

1 Եւ լուաւ պասքոր որդի եմմերայ քահանայ, և նա էր հրամանատար և իշխան տանն Տն, յերեմիայէ ՚ի մար_

մարգարէանալ զբանս զայսոսիկ ։

2 *Եհար պասքոր զերեմիա մարգարէ. եւ արգել զնա 'ի վերնատանն. որ է 'ի դրանն բենիամենի. 'ի վերնատանն՝ որ էր 'ի տան Տն ։ 3 *Եւ եղեւ 'ի վաղիւն անդր. եւ եհան պասքոր զերեմիա 'ի վերնատանէ անտի. եւ ասէ ցնա երեմիա. ոչ պասքոր կոչեաց զանուն քո Տր. այլ գերի թափառական ։ 4 *Զի այսպէս ասէ Տր. ահաւադիկ ես տաց զքեզ 'ի գերութիւն. հանդերձ ամ բարեկամօք քովք. եւ անկցին 'ի սուր թշնամեաց իւրեանց. եւ աչք քո տեսցեն ։ եւ զքեզ եւ զամ տունդ յուդայ տաց 'ի ձեռս թագաւորին բաբելացւոց. եւ գերեսցեն զնոսա 'ի բաբելոն. եւ կոտորեսցեն զնս սրով ։ 5 *Եւ տաց զամ զզօրութիւն քաղաքիդ այդորիկ. զամ վաստակս դորա. եւ զամ պատիւ դորա. եւ զամ գանձս թագաւորին յուդայ, տաց 'ի ձեռս թշնամեաց իւրեանց. եւ յափշտակեսցեն, եւ առցեն զնս. եւ տարցին զնոսա 'ի բաբելոն ։ 6 *Եւ դու պասքոր՝ եւ ամ բնակիչք տան քոյ երթիջիք գերի ։ 'ի բաբելոն երթիցես. եւ անդ մեռանիցիս. եւ անդ թաղեսցիս. դու եւ ամ բարեկամք քո՝ որոց մարգարէացարն զստութիւն ։ 7 *Խաբեցեր զիս Տր, եւ խաբեցայ. յաղթահարեցեր՝ եւ զօրացար. եղէ 'ի կատականս. զօր ամ հանի 'ի գլուխ այպանել ։ 8 *Զի դառնութբ բանիւ իմով արարից այպն զարհամարհութիւն. եւ 'ի թշուառութէ զբողոք բարձից ։ զի եղեւ ինձ բանն Տն 'ի նախատինս եւ 'ի կատականս զօրհանապազ ։ 9 *Եւ ասացի՝ ոչ անուանեցից զանուն Տն. եւ ոչեւս խօսեցայց յանուն նորա ։ եւ եղեւ 'ի սրտի իմում իբրեւ զհուր վառեալ. բորբոքեալ ի ոսկերս իմ. եւ լքայ յամ կողմանց. եւ ոչ կարէի հանդարտել ։ 10 *Զի լուայ զպարսաւանս բազմաց. շուրջ՝ զինեւ միաբանեալ ժողովելոց. թէ արէք՝ եւ յարիցուք 'ի վր նորա. ամ որք բարեկամք դորա, հնարեցարուք նմա հնարս. թերեւս խաբեսցի եւ յաղթեսցուք նմա. եւ խնդրեսցուք զվրէժ մեր 'ի նմանէ ։ 11 *Եւ Տր ընդ իս էր՝ իբրեւ զպատերազմօղ՝ եւ զօրացուցանէր. վասն այնորիկ հալածեցին. եւ իմանալ զհնարս ոչ կարէին. ‖ յամօթ եղեն յոյժ. ‖ զի ոչինչ իմացան. անարգանք նց յաւիտենից մի մոռասցին ։ 12 *Եւ դու Տր զօրութեանց՝ ‖ որ կշռես զիրաւունս՝ եւ քննես զսիրտ եւ զերիկամունս, տեսից առ 'ի քէն զվրէժխնդրութիւն 'ի վր նոցա. զի առ քեզ յայտնեցի զաղերս իմ ։ 13 *Օրհնեցէք զՏր՝ գովեցէք զնա՝ զի փրկեաց զանձն

ղթ

[Margin: այլ որ- հանէր ամ ապրեալ; ամ որք բարեկամք; ‖ Սայր. 23. 40.; ‖ Եր. 11. 20. եւ 17. 10.]

տնանկի 'ի ձեռաց չարարարաց ։

14 *‖ Անիծեալ լիցի օրն՝ յորում ծնայ. եւ օրն յորում ծնաւ զիս մայր իմ, մի եղիցի ուխտադրութե ։ 15 *Անիծեալ լիցի մարդ՝ որ ետ զաւետիս հօր իմոյ. եւ ասէ՝ թէ ծնաւ արու մանուկ. եւ ուրախութբ ուրախ առնէր զնա ։ 16 *Եւ եղիցի մարդն այն իբրեւ զքաղաքս՝ զորս կործանեաց Տր սրտմտութբ՝ եւ ոչ զղջացաւ. լուիցէ գոյժ ընդ առաւօտս ։ եւ աղաղակ 'ի միջօրեայ ժամանակի ։ 17 *Զի ոչ սպան զիս անդէն յարգանդի. եւ լինէր ինձ մայր իմ գերեզման. եւ արգանդ յղութե յաւիտենից ։ 18 *Ընդէ՞ր է ինձ այս. զի ելի յարգանդէ տեսանել զցաւս՝ եւ զվաստակս. եւ վախճանեցան ամօթով աւուրք իմ ։

[Margin: ‖ Յոբ. 3. 2.; եւ ոչ զղջացաւ]

## ԳԼ. ԻԱ.

1 Բանն որ եղեւ առ երեմիա 'ի Տէ. յորժամ առաքեաց առ նա սեդեկիա որդի մաասեայ զպասքոր որդի մեղքեայ. եւ զսոփոնիա զքահանայ՝ եւ ասէ ։ 2 *Հա՛րց վն մեր զՏր. զի նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց եհաս 'ի վերայ մեր. թերեւս արասցէ Տր ընդ մեզ՝ ըստ ամ իւրոց սքանչելեաց. եւ դարձուսցէ 'ի մէնջ ։ 3 *Եւ ասէ ցնս երեմիա. այսպէս ասասջիք սեդեկիայ ։ 4 *Այսպէս ասէ Տր Անծ իէլի. ահաւադիկ ես դարձուցանեմ զզէնս ձեր 'ի պատերազմէ զոր ունիք 'ի ձեռս ձեր. որովք դուք պատերազմիք ընդ արքային բաբելացւոց՝ եւ ընդ քաղդեացիս. որք պաշարեցին զձեզ արտաքոյ պարսպացդ ։ եւ ժողովեցից զնս 'ի մէջ քաղաքիդ այդորիկ ։ 5 *Եւ տաց պատերազմ՝ ես ինքն ընդ ձեզ. վերացեալ ձեռամբ՝ եւ բարձրացեալ բազկաւ. սրտմտութբ՝ եւ բարկութբ՝ եւ մեծաւ ցասմամբ ։ 6 *Եւ հարից զամ բնակիչս քաղաքիդ այդորիկ. զմարդ եւ զանասուն՝ մեծաւ մահուամբ՝ եւ մեռցին ։ 7 *Եւ յետ այնորիկ այսպէս ասէ Տր. մատնեցից զսեդեկիայ արքայ յուդայ՝ եւ զծառայս իւր եւ զժողովուրդ՝ որ մնացեալ իցէ 'ի քաղաքիդ յայդմիկ 'ի մահուանէ. եւ 'ի սրոյ. եւ 'ի սովու. 'ի ձեռն նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց. եւ 'ի ձեռս թշնամեաց իւրեանց. եւ 'ի ձեռս որք խնդրէին զանձինս դոցա. եւ կոտորեսցեն զդոսա 'ի բերան սրոյ. եւ ոչ խնայեսցին 'ի դոսա՝ եւ ոչ ողորմեցայց դոցա. եւ ոչ գթացայց 'ի դոսա ։ 8 *Եւ ցժողովուրդն ասասցես. այսպէս ասէ Տր. ահաւադիկ ես եդի առաջի երեսաց ձերոց. զճանապարհ կենաց. եւ զճանապարհ մահու ։ 9 *‖ Որ նստիցէ 'ի քաղաքիդ յայդմիկ. ‖ Սայր. 38. 2.

[Margin: սեդեկիա արքայ զպասքոր որդի մելքեայ, եւ զսոփոնիա որդի մաասեայ քահանայ]

սրով՝ և սովով՝ և մահու մեռցի։ և որ
ելցէ, կայցէ առաջի քաղդէացւոցն.
որոց պաշարեալ են զձեզ. կեցցէ անձն
իւր ինքեան՝ 'ի պարգև լիցի՝ և կեցցէ։
10 * Զի հաստատեցի զերեսս իմ 'ի վ̃ր
քաղաքիդ այդորիկ 'ի չարիս՝ և ոչ 'ի
բարիս՝ ասէ Տր̃ ։ 'ի ձեռս թագաւո-
րին բաբելացւոց մատնեսցի. և այրես
ցէ զդա հրով։ 11 * Տուն արքայիդ յու-
դայ։ 12 * Լո՛ւ տանդ դաւթի, լուարո՛ւք
զպատգամ Տն̃. այսպ̃ ասէ Տր̃ ‖ դատե-
ցէ՛ք ընդ առաւօտս դատաստան. և
իրաւացուցէ՛ք իրաւունս. փրկեցէ՛ք
զյափշտակեալն 'ի ձեռաց զրկողին իւր
ոյ. զի մի՛ բորբոքեսցի իբրև զհուր բար
կութ̃ի իմ։ վառեսցի՝ և ոչո՛ք իցէ որ
շիջուցանիցէ յերեսաց անիրաւութե
գնացից ձերոց։ 13 * Ահաւադիկ ես 'ի վ̃ր
քո՝ որ բնակեալ ես 'ի ծործորս դաշ-
տականս տիւրոսի՝ ասէ Տր̃։ ոյք ասէին՝
ո՞ զարհուրեցուսցէ զմեզ. կամ ո՞ մտա
նիցէ 'ի բնակութիս մեր։ 14 * Եւ արա
րից այցելութ̃ի 'ի վ̃ր ձեր. ըստ չարու
թե գնացից ձերոց՝ ասէ Տր̃. և վառե
ցից զհուր յանտառս նորա՝ և կերիցէ
շուրջ զնովաւ զամենայն։

‖ Եր. 22. 3.

## ԳԼ. ԻԲ.

1 Այսպ̃ ասէ Տր̃. երթ՝ և էջ 'ի տուն
թագաւորին յուդայ՝ և խօսես-
ցիս անդ զբանսդ զայդ։ 2 * Եւ ասաս-
ցես. լո՛ւր զպատգամս Տն̃ թագաւորդ
յուդայ. որ նստիդ յաթոռ դաւթի.
դու և ծառայք քո՝ և ժողովուրդ քո.
և որք մտանեն ընդ դրունսդ ընդ այ-
դոսիկ։ 3 * Այսպէս ասէ Տր̃ ‖ արարէ՛ք
իրաւունս և արդարութի. փրկեցէ՛ք
զյափշտակեալն 'ի ձեռաց զրկողին իւր
ոյ. զպանդուխտն՝ և զորբն՝ և զայրին
մի՛ բռնադատէք. և մի՛ ամպարշտիք.
և զարիւն անպարտ մի՛ հեղուք 'ի տեղ
ւոջդ յայդմիկ։ 4 * Զի եթէ առնելով
առնիցէք զբանդ զայդ՝ մտցեն ընդ
դրունս տանդ այդորիկ թագաւորք.
որք նստիցեն յաթոռ դաւթի։ և ելա-
նիցեն 'ի կառս՝ և յերիվարս. ինքն և
ծառայք իւր՝ և ժողովուրդ իւր։
5 * Ապա թէ ոչ առնիցէք զբանդ զայ
դոսիկ՝ յանձն իմ երդուայ՝ ասէ Տր̃.
զի յաւերակ եղիցի տունդ այդ։
6 * Զի այսպէս ասէ Տր̃ 'ի վ̃ր տան թա
գաւորին յուդայ։ գաղաադ՝ դու ես
ինձ գլուխ լիբանանու. եթէ ոչ եդից
զքեզ յաւերակ 'ի քաղաքս չբնակեալս։
7 * Եւ հանից 'ի վ̃ր քո սատակիչս. զայր
եւ զտապար իւր. և կոտորեսցեն զընտիր
ընտիր մայրիս քո. և արկցեն 'ի հուր։
8 * Եւ անցցեն ազգք բազումք ընդ մէջ
քաղաքիդ այդորիկ. և ասասցեն իւրա
քանչիւր ցընկեր իւր. ‖ ընդէ՞ր արար
Տր̃ այդպէս զայդ քաղաքիդ մեծի։
9 * Եւ ասասցեն՝ փոխանակ զի թողին
զուխտ Տն̃ Այ̃ իւրեանց. և երկիր պա
գին աստուծոց օտարաց՝ և ծառայե
ցին նոցա։ 10 * Մի՛ լայք զմեռեալն՝ և
մի՛ ողբայք զնա. այլ լացէք լալով 'ի
վ̃ր այնորիկ՝ որ ելանիցէ՝ և այլ ոչ դառ
նայցէ. և ոչ տեսցէ զերկիր ազգի
իւրոյ։ 11 * Զի այսպէս ասէ Տր̃ 'ի վ̃ր
սեղղենայ որդւոյ յովսեայ. որ թագաւո
րեաց փոխանակ յովսեայ հօր իւրոյ. որ
ել 'ի տեղւոջէ յայդմանէ. և ոչ ևս
դարձցի անդրէն։ 12 * Զի 'ի տեղւոջ
յորում գերեցին զնա՝ անդ մեռցի.
և զերկիրդ զայդ ո՛չ տեսցէ։ 13 * Ո՛հ, որ
շինէ զտուն իւր՝ և ոչ արդարութ̃բ. և
զվերնայարկս իւր՝ և ոչ իրաւամբք. և
'ի մերձաւորէ իւրմէ գործի նմա գործ
ձրի. և զվարձս նորա ո՛չ հատուցանէ
նմա։ 14 * Շինեցեր քեզ տուն պարշա-
ծոյ՝ վերնատուն հովանոց. յօրինեալ
պատուհանիւք. տախտակամածս 'ի
մայրից. ծեփեալ նօթիւ։ 15 * Մի թէ
թագաւորեսցես՝ զի զայրացար 'ի մայ
րակերտս հօր քոյ. մի՛ կերիցեն՝ մի՛ արբ
ցեն. զի զիրաւունս և զարդարութիւ
զբարութի ո՛չ ծանեան։ 16 * Ո՛չ արարին
իրաւունս անանկին. և զաղքատն ո՛չ
իրաւացուցին։ ո՞չ այն իսկ է ճանա-
չել զիս՝ ասէ Տր̃։ 17 * Ահաւադիկ ո՛չ
իսկ են քո աչք. և սիրտ քո ո՛չ է 'ի բա-
րութի այլ յագահութի. և 'ի հեղուլ
զարիւն անպարտ. և յանիրաւութի և
առնել սպանութի։ 18 * Վ̃ա յայսորիկ այսպ̃
ասէ Տր̃ 'ի վ̃ր յովակիմայ որդւոյ յո-
սեայ արքայի յուդայ՝ զայրդ զայդ. մի՛
կոծեսցեն. և մի՛ ասասցեն՝ վա՛յ վա՛յ
եղբայր. վա՛յ վա՛յ եղբայր. և մի՛ կոծես
ցեն՝ և ասասցեն վա՛յ վա՛յ Տր̃. վա՛յ վա՛յ
սիրելի։ 19 * Զթաղումն իշոյ թաղեսցի.
նեխեալ ընկեսցի արտաքոյ դրանն
երմի։ 20 * Ել 'ի լիբանան՝ և գոչեա՛. և
'ի բասան տուր զձայն քո. աղաղա՛կ
բարձ յայնկոյս ծովուն. զի խորտակե
ցան 'ի միասին ամ̃ հոմանիք քո։
21 * Խօսեցայ ընդ քեզ 'ի սխալիլն քում.
և ասացեր՝ թէ ոչ լուայց. այդ է ճա-
նապարհ քո 'ի մանկութէ քումմէ. զի
ո՛չ լուար բարբառոյ իմոյ։ 22 * Զամ̃ հո
վիւս քո հողմք արածեսցեն. և ամ̃
հոմանիք քո 'ի գերութի գնասցեն. զի
յայնժամ ամաչեսցես. և անարգես-
ցիս յամ̃ սիրելեաց քոց։ 23 * Բնակեալդ
'ի լիբանան՝ ամրացեալդ 'ի մէջ մայ-
րից. հեծեծեսցես 'ի հասանել քեզ
ցաւոց՝ և երկանց իբրև ծննդականի։

‖ Եր. 21. 12.

‖ 2. Օր. 29. 24. 3 Թագ. 9. 8.

* Կեն-

*Կենդանի եմ ես՝ ասէ Տր̃. եթէ լի_
նելով լինիցի Յեքոնիա որդի Յովակի
մայ արքայի Յուդայ՝ կնիք յաջոյ ձեռին
իմում. և անտի կորզեցից զքեզ։ 24
*Եւ տաց զքեզ 'ի ձեռս խնդրողաց 25
անձին քոյ. և 'ի ձեռս այնոցիկ՝ յորոց
զարհուրեիր յերեսաց նց̃. և 'ի ձեռս
Նաբուգոդոնոսորայ արքային բաբելա
ցւոց. և 'ի ձեռս քաղդէացւոց։ *Եւ 26
ընկեցից զքեզ՝ և զմայր քո յերկիր
օտար՝ յոր ոչ իջեր. և անդ մեռջիք։
*Եւ յերկիրս յոր ուխտադիր լինիցին 27
ոգւովք իւրեանց դառնալ այսրէն, մի՛
դարձցին։ *Զի անկաւ ինքն՝ և զաւակ 28
իւր. և եղև տարադիր բերանն ար_
համարհեալ. թօթափեալ՝ անարգեցաւ
այրն Յեքոնիա. իբրև զաման մի անպի
տան անկաւ յերկիր՝ զոր ոչ գիտէր։
*Երկիր, երկիր, երկիր, լո՛ւր զպատ 29
գամ Տն̃։ *Այսպէս ասէ Տր̃՝ գրեա՛ 30
զայրդ զայդ՝ այր տարադիր. զի մի՛ ա_
ճեսցէ յաւուրս իւր. և մի՛ աճեսցէ 'ի
զաւակէ դորա այր. որ նստցի յաթոռն
դաւթի իշխան յուդայ։

## ԳԼ. ԻԳ.

Ո՛հ հովիւք՝ որք կորուսին՝ և ցրուե 1
ցին զխաշինս արօտի քոյ. ասէ Տր̃։
*Վասն այդորիկ այսպէս ասէ Տր̃ Այ̃ 2
Իլի 'ի վերայ հովուացդ՝ որք հովուեն
զժողովուրդ իմ. դուք ցրուեցիք զխա
շինս իմ. և մերժեցիք զնոսա. և ո՛չ
յանձանձեցիք զնոսա. արդ աւադիկ
ես խնդրեցից վրէժս 'ի ձէնջ. ըստ չա
րութե̃ գնացից ձերոց՝ ասէ Տր̃։ *Եւ 3
ես ընկալայց զմնացորդս ժողովրդեան
իմոյ յամ̃ երկրէ՝ ուր մերժեցի զնոսա
անդր. և հաստատեցից զնոսա յարօտս
իւրեանց. աճեսցեն՝ և բազմասցին։
*Եւ յարուցից հովիւս՝ որք հովուես 4
ցեն նց̃. և ո՛չևս երկիցեն. և ո՛չ զարհու
րեսցին. և ո՛չ լիցին անտես՝ ասէ Տր̃։
*Ահա՛ աւուրք գան՝ ասէ Տր̃. և յա_ 5
րուցից դաւթի ծագումն արդարութե̃.
և թագաւորեսցէ թագաւոր. և 'ի միտ
առցէ. և արասցէ իրաւունս և զարդա
րութի̃ 'ի վր̃ երկրի։ *Յաւուրս նր̃ 6
փրկեսցի յուդա. և իէլ բնակեսցի
յուսով. և այս է անուն նր̃՝ զոր կոչես
ցէ նմա՝ Տր̃ (յովսեդեկ 'ի մարգարէս)
արդարութի̃ մեր։ *Վասն այդորիկ 7
ահա աւուրք գան ասէ Տէր. և ո՛չ ևս
ասասցեն՝ եթէ կենդանի է Տէր՝ որ
էհան զորդիսն իլի յերկրէն եգիպտաց
ւոց։ *Այլ թէ կենդանի է Տր̃՝ որ 8
էհան զամ̃ զաւակ իլի յերկրէն հիւսի
սոյ. և յամ̃ աշխարհաց. ուր մեր_
ժեաց զնս̃ անդր. և պատսպարեցից

9 զնս̃ անդրէն յերկիր իւրեանց։ *Ի վր̃
մարգարէից բեկաւ սիրտ իմ յիս. շար_
ժեցան ամ̃ ոսկերք իմ. և եղէ իբրև
զայր մի աղճատեալ, և իբրև զայր մի
չարալլուկ 'ի գինւոյ յերեսաց Տն̃ և
յերեսաց մեծվայելչութեան փառաց
10 նորա։ *Զի լցաւ երկիր շնացողօք.
զի յերեսաց երդման սուգ էառ եր_
կիր. ցամաքեցան արօտք անապատի.
և եղեն ընթացք նոցա չարութի̃. և
11 ուժգնութի̃ նոցա ոչ այնպէս։ *Զի
մարգարէ և քահանայ պղծեցան. և 'ի
տան իմում գտի զչարիս նց̃՝ ասէ Տր̃։
12 *Վասն այնորիկ եղիցի ճանապարհն
նց̃ նոցին գայթագղութի̃ մգլի. գայ
թագղեսցին՝ և կործանեսցին 'ի նմին.
զի ածից 'ի վերայ նոցա չարիս. յամի
13 այցելութե̃ իւրեանց՝ ասէ Տր̃։ *Եւ 'ի
մարգարէսն շամրնի տեսի անօրէնու
թի̃. զի մարգարէանային 'ի ձեռն բա
հաղու. և մոլորեցուցին զժողովուրդ
14 իմ զիէլ։ *Եւ 'ի մարգարէսն երէմի
տեսի արհաւիրս. զի շնային՝ և եր_
թային զհետ ստութե̃ց. և օգնական
լինէին ձեռաց չարաց՝ առ 'ի դառնա_
լոյ իւրաքանչիւր ումեք 'ի ճանապար_
հէ իւրմէ չարէ. եղեն ինձ ամենեքին
իբրև զսոդոմ. և բնակիչք նորա իբրև
15 զգոմոր։ *Վասն այնորիկ այսպէս ասէ
Տր̃ զօրութե̃ց 'ի վերայ մարգարէիցն.
‖Ահաւադիկ ես ջամբեցից դոցա ցաւս.
և արբուցից նոցա զջուր դառնութե̃.
զի 'ի մարգարէիցն երէմի ել պղծութի̃
16 ընդ ամ̃ երկիր։ *Այսպէս ասէ Տէր
զօրութեանց ‖ մի՛ լսէք բանից մարգա
րէից՝ որք մարգարէանան ձեզ. զի զբա
նսն դոքա ձեզ. պտեսիլ սրտից իւր
եանց խօսին. և ո՛չ 'ի բերանոյ Տն̃։
17 *Ասեն ապստամբելոցն 'ի բանէ Տն̃
թէ ‖ խաղաղութի̃ եղիցի ձեզ. և ամե
նեցուն որք գնան ըստ կամաց իւրեանց. և
ամ̃ի, որ գնայ ըստ մոլորութե̃ սրտի
իւրոյ. ասեն՝ ո՛չ եկեսցէ 'ի վր̃ քո չար։
18 *Զի ո՞վ եկաց 'ի հաստատութե̃ Տն̃
և ետես. և լուաւ զբանն նր̃՝ ո՞վ ունկն
19 ետ բանի իմում՝ և լուաւ։ *‖Ահաւա
դիկ շարժումն 'ի Տէ. և բարկութիւն ‖
մրրկեալ շարժմամբ եկեսցէ. 'ի վր̃ ամ_
20 պարշտաց եկեսցէ։ *Եւ մի՛ դարձցի
սրտմտութի̃ Տն̃, մինչև արասցէ՝ և
հաստատեսցէ զյօժարութի̃ սրտի նր̃. արդ
յետին ժամանակս իմասցին զայն իմա
21 նալով։ *Ո՛չ առաքէի զմարգարէսն՝
և նոքա ընթանային. ո՛չ խօսեցայ ընդ
նոսա՝ և նոքա մարգարէանային։
22 *Եթէ կացեալ էր 'ի հաստատութե̃
իմում. և լուեալ էր զբանս իմ ժողո_
վրդեան իմում. դարձուցեալ էր զնս̃
'ի ճա_

Եզեկ. 13.3. և 34. 2. — Վայր. 33. 14. — Եսայ. 4. 2. և 40. 10. և 45.8. — Եզեկ. 34. 11. և 23. — Դանի. 9.24. — Յոհ. 1. 45. — Վեր. 16.14. — Վեր. 9.15. — Վայր. 27.9. և 29. 8. — Վեր. 5.12. և 14.13. — Վայր. 30.14.

'ի ճանապարհաց իւրեանց չարաց. և 'ի գնացից նոցա չարաց։ *Ա՞ծ մերձաւոր 23 եմ ես՝ ասէ Տր. և ո՞չ Ա՞ծ հեռաւոր։ *Եթէ թաքիցէ մարդ 'ի թաքստեան. 24 և ես ոչ տեսից զնա՝ ասէ Տր. միթէ զերկինս և զերկիր ես ո՞չ լնուցում՝ ասէ Տր։ *Լուայ զինչ խօսէին մարգարէքն՝ 25 զոր մարգարէանային յանուն իմ սուտ՝ և ասէին. երազ յերազեցայ ինձ։ *Մինչև յե՞րբ լինիցի 'ի 26 սրտի մարգարէիցդ՝ որք մարգարէանան զսուտ. և 'ի մարգարէանալ զկամս սրտից իւրեանց խորհին։ *Մոռանալ ժողովրդեան իմոյ զօրէնս 27 իմ երազովք իւրեանց՝ զոր պատմէին իւրաքանչիւր ընկերի իւրում. զորօրինակ մոռացան հարքն դոցա զանուն իմ 'ի ձեռն բահաղու։ *Մարգարէն, 28 յորում երազն իցէ՝ պատմեսցէ զերազն իւր. և յորում բան իմ իցէ. պատմեսցէ զբանն իմ ճշմարտութբ։ զի՞նչ է յարդ առ ցորենով՝ ասէ Տր։ *Ո՞չ 29 ապաքէն նոյնպէս բանք իմ իբրև զհուր են՝ ասէ Տր. և իբրև զմուրճ, որ հատանէ զվէմ։ *Վն այդորիկ ահա ես 30 'ի վրայ մարգարէիցդ՝ ասէ Տր. որք գողանան զբանս իմ իւրաքանչիւր յընկերէ իւրմէ։ *Ահաւասիկ ես 'ի վրայ 31 մարգարէիցդ՝ ասէ Տր. որք մերժեն զմարգարէս 'ի լեզուաց. և նիրհեն զնիրհս իւրեանց։ *Ահաւասիկ ես 'ի 32 վրայ մարգարէիցդ որք մարգարէանան զերազս ստութե՝ ասէ Տր. և պատմեն զամենայն. և մոլորեցուցանեն զժողովուրդն իմ ստութբ իւրեանց. և մոլորութբ իւրեանց. և ես ոչ առաքեցի զնս՝ և ոչ պատուիրեցի նոցա. և օգտութին ինչ ոչ օգտեցին ժողովրդեանդ այդմիկ՝ ասէ Տր։ *Եւ եթէ հարցանիցէ 33 զքեզ ժողովուրդդ այդ՝ կամ մարգարէ՝ կամ քահանայ՝ և ասիցէ. զի՞նչ է առածդ Տն. և ասասցես ցնս, դուք էք առածն. և կործանեցից զձեզ ասէ Տր։ *Եւ մարգարէ՝ և քահանայ՝ և 34 ժողովուրդ՝ որ ասիցէ թէ առած Տն. խնդրեցից զվրէժ 'ի մարդոյն յայնմանէ՝ և 'ի տանէ նորա։ *Զի ոչ նոյնպէս 35 ասիցէք իւրաքանչիւր ցընկեր իւր և իւրաքանչիւր ցեղբայր իւր՝ թէ զի՞նչ պատասխանի արար Տր. և զի՞նչ խօսեցաւ Տր։ *Եւ առած Տն մի ևս անուանեսջիք. 36 զի առած Տն եղիցի մարդոյ բանն նր. և դարձուցանէք զբանս Այ կենդանւոյ՝ Տն զօրութեց Այ մերոյ։ *Այլ այդպէս ասասջիք ցմարգարէն. 37 զի՞նչ արար քեզ պատասխանի Տէր. և զի՞նչ խօսեցաւ Տր։ *Եթէ առած 38 Տն ասիցէք. վասն այդորիկ այսպէս ասէ Տր. փոխանակ զի ասացիք զբանդ առած Տն. ես ոչ առաքեցի առ ձեզ. և ասէ. մի ասէք առած Տն։ *Վասն այդորիկ 39 ահաւադիկ ես առից զձեզ առիմ. և կործանեցից զձեզ՝ և զքաղաքդ՝ զոր ետու ձեզ և հարցն ձերոց յերեսաց իմոց։ *Եւ տաց 'ի վերայ ձեր նախատինս 40 յաւիտենից. և անարգանս յաւիտենից՝ որք ոչ մոռասցին։ 20.11.

## Գլ: ԻԴ։

1 Ցոյց ինձ Տր երկուս կողովս թզոյ՝ որք կային առաջի տաճարին Տն. յետ գերելոյն նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց, զյեքոնիայ որդի յովակիմայ արքայի յուդայ. և զիշխանս յուդայ. և զարուեստագէտս. և զկալանաւորականս. և զմեծամեծս յէմէ. և տարաւ զնոսա 'ի բաբելոն։ 2 *Կողով մի քաղցր յոյժ թզոյ իբրև զկանխահաս թզոյ. և կողովն երկրորդ ժանտահամ թզոյ, որ ոչ ուտիցի 'ի ժանտութէ թզոյ։ 3 *Եւ ասէ ցիս Տր՝ զի՞նչ տեսանես երեմիա. և ասեմ թուզ՝ թուզ քաղցր՝ և առաւել քաղցր. և թուզ ժանտ՝ և առաւել ժանտ, որ ոչ ուտիցի 'ի ժանտութէ իւրմէ։ 4 *Եւ եղև բան Տն առ երեմիա. և ասէ։ 5 *Այսպէս ասէ Տր Ած Իէլի. իբրև զթուզ քաղցր, այդպէս ծանեայ զգերեալդ յուդայ՝ զորս առաքեցի 'ի տեղւոջէդ յայդմանէ յերկիրն քաղդէացւոց 'ի բարութի։ 6 *Եւ հաստատեցից զաչս իմ 'ի վերայ նց 'ի բարութի. և պատսպարեցից զնոսա 'ի սոյն երկիր. և շինեցից զնոսա. և ոչ քակեցից։ 7 *Եւ տաց նոցա սիրտ ճանաչել զիս՝ թէ ես եմ Տր. և եղիցին ինձ 'ի ժողովուրդ. և ես եղէց նոցա յԱծ. զի դարձցին առ իս յամ սրտէ իւրեանց։ 7.23. 8 *Եւ իբրև զթուզ ժանտ՝ որ ոչ ուտի 'ի ժանտութէ իւրմէ. այսպէս ասէ Տր. 29.17. այդպէս մատնեցից զսեդեկիայ արքայ և զմեծամեծս նորա. և զմնացորդս երուսաղէմի երկրիդ այդորիկ. և զբնակեալսն յեգիպտոս։ 9 *Եւ տաց զդոսա 'ի ցրումն ընդ ամ թագաւորութիս երկրի. և 'ի նախատինս՝ և յառակ. և յատելութի՝ և յանէծս. յամենայն տեղիս ուր 10 մերժեցից զդոսա անդր։ *Եւ առաքեցից 'ի դոսա սուր՝ և սով. և մահ. մինչև պակասեսցին յերկրէդ՝ զոր ետու դոցա՝ և հարց իւրեանց։

## Գլ: ԻԵ։

1 Բանն որ եղև առ երեմիայ՝ վն ժողովրդեանն յուդայ. յամին չորրորդի յովակիմայ՝ որդւոյ յովսիայ արքային

քայի յուդայ. այն ամ առաջին էր նաբուգոդոնոսորայ՝ արքային բաբելացւոց։ 2 *(Զբանն) զոր խօսեցաւ Երեմիա մարգարէ առ ամ ժողովուրդն յուդայ. և առ բնակիչսն Եմի՝ և ասէ։ 3 *Յերեքտասաներորդէ ամէ յօսիայ որդւոյ ամոնայ՝ արքայի յուդայ մինչև ցայսօր. այս քսան և երեք ամք՝ զի եղև բանն Տն առ իս՝ և խօսեցայ ընդ ձեզ. կանխեալ ընդ առաւօտս և ասէի. և ոչ լուայք։ 4 *Եւ առաքէի առ ձեզ զծառայս իմ զմարգարէս ընդ առաւօտս, արձակեալ. և ոչ լուայք. և ոչ անսայիք ականջօք ձերովք լսել։

Դ Թագ. 17. 13. Եր. 18. 11. Եր. 35. 15.

5 *Ասէի՝ դարձարուք իւրաքանչիւր 'ի ճանապարհէ իւրմէ չարէ. և 'ի գնացից ձերոց չարաց. և բնակեսջիք յերկրի՝ զոր ետու հարցն ձերոց յաւիտենից մինչև յյաւիտեանս։ 6 *Եւ մի երթայք զհետ աստուածոց օտարաց. ծառայել նոցա՝ և երկիրպագանել. և մի բարկացուցանէք զիս գործովք ձեռաց ձերոց չարչարել զձեզ։ 7 *Եւ ոչ լուայք ինձ՝ ասէ Տր. զի բարկացուցանիցէք զիս գործովք ձեռաց ձերոց չարչարել զձեզ։ 8 *Վն այդորիկ այսպէս ասէ Տր զօրութեանց. զի ոչ հաւատացիք բանից իմոց։ 9 *Ահաւասիկ ես առաքեմ. և առից զամ ազգս հիւսիսոյ՝ ասէ Տր. և զնաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց ծառայ իմ. և ածից զնս 'ի վր երկրիդ այդորիկ՝ և 'ի վերայ բնակչաց դորա. և 'ի վր ամ ազգաց շուրջ զդովաւ։ և աւերեցից զդոսա. և տաց զդոսա յապականութի՝ և 'ի շչիւն՝ և 'ի նախատինս յաւիտենից։

Յայտ. 18. 22.

10 *Եւ կորուսից 'ի դոցանէ զձայն ուրախութե. և զձայն ցնծութե, և զձայն փեսայի. և զձայն հարսին. զձայն երկանի՝ և զլոյս ճրագի։

Դանի. 9. 2. Եր. 26. 6.

11 *Եւ եղիցի ամ երկիրդ այդ յաւերակ և յապականութի. և ծառայեսցեն ազգացն այնոցիկ՝ և արքային բաբելացւոց զեօթանասուն ամ։

2. Մն. 36. 22. 2. Եզր. 1. 1.

12 *Եւ 'ի կատարել ամացն եօթանասնից. խնդրեցից զվրէժ 'ի թագաւորէն բաբելացւոց՝ և յազգէն յայնմանէ՝ ասէ Տր ըստ անօրէնութե նց. և յերկրէն քաղդէացւոց. և եդից զնոսա յապականութի յաւիտենական։ 13 *Եւ ածից 'ի վր ամ երկրին այնորիկ զամ զբանս իմ՝ զոր խօսեցայ վն նոցա՝ ըստ ամ գրելոցս 'ի գիրս յայսմիկ։ զոր մարգարէացաւ Երեմիա 'ի վերայ ամ ազգաց։ 14 *Զի ծառայեցին 'ի մէջ նց. քանզի և նոքա ազգք բազումք՝ և թագաւորութիք մեծամեծք են. և հատուցից նց ըստ աստարութեն նց. և ըստ գործոց ձեռաց նց։ 15 *Զի այսպէս ասաց ցիս Տր Աձ իՂի. առ զբաժակ գինւոյս անապակի այսորիկ 'ի ձեռաց իմոց. և արբուսցես զդա ամ ազգաց՝ առ որս ես առաքեցից զքեզ։ 16 *Արբցեն՝ և քամեսցեն՝ և մոլեսցին յերեսաց սրոյն. զոր ես առաքեցից 'ի մէջ նց։ 17 *Եւ առի զբաժակն 'ի ձեռանէ Տն. և արբուցի ամ ազգաց՝ առ որս առաքեաց զիս Տր։ 18 *Զեմի, և զքաղաքացն յուդայ. և զթագաւորաց նորա. և զիշխանացն նր. դնել զնս յաւերակ՝ և յանապատ՝ և 'ի շչիւն՝ և յանէծս՝ իբրև աւուրս ըստ այսմիկ։ 19 *Եւ զփարաւոնի արքային եգիպտացւոց. և զծառայից նր. և զմեծամեծաց նր. և զամ ազգի նր։ 20 *Եւ զամ խառնիճաղանճ զօրաց նր. և զամ թագաւորաց կղզւոյն. և զամ թագաւորաց երկրին այլազգեաց զասկաղոնի. և զգազայ. և զակկարոնի. և զմնացորդացն ազովտայ։ 21 *Եւ զեդովմայ. և զմովաբացւոցն. և զորդւոցն ամոնայ։ 22 *Եւ զամ թագաւորացն տիւրոսի՝ և զամ թագաւորացն սիդոնացւոց. և զթագաւորս կղզւոյն՝ որ յայնկոյս ծովուն։ 23 *Եւ զդեդանայ. և զթեմանայ. և զռովկայ. և զամենայն յապաւելոցն զերեսօք։ 24 *Եւ զամ թագաւորացն արաբացւոց. և զամ թագաւորացն խառնիճաղանճից. օթագայելոցն յանապատին։ 25 *Եւ զամենայն թագաւորացն զամբրեայ. և զամ թագաւորաց եղամայ. 26 և զամ թագաւորացն մարաց։ *Եւ զամ թագաւորացն հիւսիսոյ յարևելից. մերձաւորաց և հեռաւորաց. իւրաքանչիւր առ եղբօր իւրում, և զամ թագաւորաց երկրի, որ 'ի վերայ երեսաց երկրի. և թագաւոր սիսակ արբցէ յետ ամենեցուն։ 27 *Եւ ասասցես ցնոսա՝ այսպէս ասէ Տէր ամենակալ Աձ իՂի. արբէք՝ և արբեցարուք. յիմարեցարուք՝ և կործանեցարուք. և մի կանգնիցէք յերեսաց սրոյն. զոր ես առաքեցից 'ի մէջ ձեր։ 28 *Եւ եղիցի յորժամ ոչ կամիցին ընդունել զբաժակն 'ի ձեռանէ քումմէ ըմպել. ասասցես ցնոսա. այսպէս ասէ Տր զօրութեանց՝ ըմպելով արբջիք։

1. Պետ. 4. 17.

29 *Զի ահա 'ի քաղաքն՝ յորում կոչեցեալ է անուն իմ 'ի նմա՝ արարի սկիզբն չարչարելոյ. և դուք սրբելով սրբեսջիք. ոչ սրբեսջիք. զի սուր կոչեցից ես 'ի վերայ ամենեցուն՝ որք բնակեալք են յերկրի՝ ասէ Տր զօրութեանց։ 30 *Եւ դու մարգարէասցես 'ի վր նոցա զամ զպատգամս զայսոսիկ. և ասասցես ցնս. Տր 'ի բարձանց 'ի սրբութենէ իւրմէ տացէ հրաման. տացէ զձայն իւր. զբանն հրամանի 'ի տեղւոջէ իւրմէ. և նոքա իբրև

Յովէ. 3. 16. Ամով. 1. 2.

կթող

կթօղ տայցեն պատասխանի 'ի վ̃ր ա̃մ երկրի: 31 *Հասեալ եկն սատակումն 'ի կողմանս երկրին. զի դատաստան Տ̃ն է 'ի մէջ ազգաց. և դատեսցէ ինքն զա̃մ մարմին. և ամպարիշտք տուեալ 'ի սուր՝ ասէ Տ̃ր: 32 *Այսպէս ասէ Տ̃ր զօրութեանց: աՀաւասիկ չարիք գան յազգէ 'ի վ̃ր ազգի. և մրրիկ մեծ ելցէ 'ի ծագաց երկրի: 33 *Եւ եղիցին վիրաւորք 'ի Տ̃է յաւուր Տ̃ն. 'ի կողմանէ մինչև ցկողմն երկրին. մի կոծեսցին, և մի ժողովեսցին, ընդ երեսս դաշտին իբրև զաղբ ընկեսցին: 34 *Գոչեցէք Հովիւք, և աղաղակեցէք. կոծեցարուք խոյք մաքեաց. զի կատարեցան աւուրք ձեր 'ի սպանումն՝ և 'ի ցրումն ձեր. կործանեսջիք իբրև խոյք ընտիրք: 35 *Եւ կորիցէ փախուստ 'ի Հովուաց. և փրկութ̃ի խոյոցն մաքեաց: 36 *Ձայն գուժի Հովուաց՝ և աղաղակ խոյոցն մաքեաց. և սպառեաց Տ̃ր զարօտս ն̃ց: 37 *Եւ դադարեսցէ գեղեցկութ̃ի խաղաղութ̃են՝ յերեսաց բարկութ̃ե սրտմտութ̃ե Տ̃ն: 38 *Թողին որպէս առիւծ զմորի իւր. զի եղև երկիր նոցա յանապատ. յերեսաց բարկութ̃ե սրտմտութ̃ե սրոյն մեծի. և յերեսաց բարկութ̃ե սրտմտութ̃ե նորա:

յաւուր յայնմիկ

եկող

## ԳԼ. ԻԶ.

1 'Ի սկզբան թագաւորութեանն յովակիմայ որդւոյ յովսեայ արքայի յուդայ. եղև բանս այս 'ի Տ̃է և ասէ: 2 *Այս̃պ ասէ Տ̃ր: կաց 'ի սրաՀի տանն Տ̃ն՝ և մարգարէասցես ա̃մ յուդայ՝ ոյք գայցեն երկիրպագանել 'ի տանն Տ̃ն՝ զա̃մ բանս՝ զորս կարգեցի առ քեզ մարգարէանալ նոցա: մի Հատանիցես ինչ 'ի բանիցդ: 3 *Թերևս լուիցեն, և դարձցին իւրաքանչիւր 'ի ճանապարՀէ իւրմէ չարէ. և մեղմացայց 'ի չարեացն՝ զոր խորՀիմ ես առնել ն̃ց վ̃ս չարութ̃ե գնացից նոցա: 4 *Եւ ասասցես ցնոսա. այսպէս ասէ Տ̃ր: եթէ ոչ լուիցէք ինձ գնալ յօրէնս իմ. զոր ետու յանդիման ձեր: 5 *Եւ լսել բանից ծառայից իմոց մարգարէից՝ զորս ես առաքեմ առ ձեզ կանխաւ. և առաքեցի՝ և ոչ լուայք: 6 *||Արարից զտունդ զայդ իբրև զՇելովմ. և զքաղաքդ տաց յանէծս ա̃մ ազգաց երկրի: 7 *Եւ լուան քաՀանայքն՝ և սուտ մարգարէքն՝ և ա̃մ ժողովուրդն 'ի խօսել երեմիայի զբանս զայսոսիկ 'ի տանն Տ̃ն: 8 *Եւ եղև 'ի դադարել երեմիայ 'ի խօսիցն՝ ըստ ա̃մի զոր Հրաման ետ նմա Տ̃ր խօսել առ ա̃մ ժողովուրդն: կալան զնա քաՀանայքն՝ և սուտ մարգարէքն՝ և

||Ա Թագ. 4. 2. և 10.

ա̃մ ժողովուրդն՝ և ասեն. մաՀու մեռցիս: 9 *Զի մարգարէացար յանուն Տ̃ն. և ասացեր՝ եթէ իբրև զՇելովմ եղիցի տունս այս. և քաղաքս աւերեսցի 'ի բնակչաց: և կուտեցաւ ժողովուրդն 'ի վ̃ր երեմիայի 'ի տան Տ̃ն: 10 *Եւ լուան իշխանքն յուդայ զբանսն զայսոսիկ. և ելին 'ի տանէ թագաւորին 'ի տուն Տ̃ն. և նստան առաջի դրանն Տ̃ն նորոյ: 11 *Եւ ասեն քաՀանայքն՝ և սուտ մարգարէքն ցիշխանսն՝ և ցամենայն ժողովուրդն. դատաստան մաՀու է առնդ այդմիկ. զի մարգարէացաւ զքաղաքէս զայսմանէ. ո̃պ ձերովք իսկ ականջօք լուայք: 12 *Եւ ասէ երեմիա ցամենեսեան՝ ցիշխանսն, և ցամենայն ժողովուրդն: ||Տ̃ր առաքեաց զիս մարգարէանալ 'ի վ̃ր տանդ այդորիկ՝ և 'ի վերայ քաղաքիս՝ զա̃մ զբանսդ՝ զոր լուայք: 13 *||Եւ արդ ուղղեցէք զճանապարՀս ձեր՝ և զգնացս ձեր. և լուարուք ձայնի Տ̃ն Այ̃ ձերոյ. և մեղմասցի Տ̃ր 'ի չարեացն՝ զոր խօսեցաւ 'ի վ̃ր ձեր: 14 *Եւ ես աՀաւասիկ կամ 'ի ձեռս ձեր. արարէք ընդ իս ո̃պ ձեր օգուտ՝ և լաւ իցէ: 15 *Բայց գիտելով գիտասջիք՝ զի թէ սպանանէք դուք զիս՝ արիւն անպարտ արկանէք 'ի վ̃ր ձեր՝ և 'ի վ̃ր քաղաքիս այսորիկ. և 'ի վերայ բնակչաց սորա: զի ճշմարտութ̃բ առաքեաց զիս Տ̃ր առ ձեզ. խօսել յականջս ձեր զա̃մ զբանս զայսոսիկ: 16 *Եւ ասեն իշխանքն՝ և ա̃մ ժողովուրդն ցքաՀանայսն՝ և ցմարգարէսն: ոչ է դատաստան մաՀու առնդ այդորիկ. զի յանուն Տ̃ն խօսեցաւ առ մեզ: 17 *Յոտն կացին արք 'ի ծերոց երկրին՝ և ասեն ցա̃մ ժողովս ժողովրդոցն: 18 *Միքիէ մօրասթացի մարգարէանայր յաւուրս եզեկիայ արքայի յուդայ: խօսեցաւ ընդ ա̃մ ժողովրդեանն յուդայ՝ և ասէ. ||այս̃պ ասէ Տ̃ր զօրութեանց. սիոն իբրև զագարակ արօրադիր լիցի. և երէմ իբրև զՀիւղս մրգապաՀաց. և լեառն տանդ եղիցի իբրև զանտառս մայրւոյ: 19 *Միթէ սպանանելով սպան զնա եզեկիա արքայ յուդայ՝ և ա̃մ Հրէաստան. ո՞չ ապաքէն զաՀի Հարան 'ի Տ̃է. և խնդրեցին յերեսաց Տ̃ն. և դադարեաց Տ̃ր յա̃մ չարեացն՝ զոր խօսեցաւ 'ի վերայ ն̃ց. և մեք արարաք չարիս մեծամեծս յանձինս մեր: 20 *Եւ այր մի մարգարէանայր յանուն Տ̃ն. ուրիա որդի սամեայ 'ի կարիաթարիմայ. և մարգարէացաւ 'ի վերայ քաղաքիս այսորիկ. և 'ի վ̃ր երկրիս այսորիկ ըստ ա̃մ բանից երեմիայի: 21 *Եւ լուաւ արքայ յովակիմ՝ և ամենայն զօրաւորք իւր՝

||Եր. 25. 11.

||Եր. 7. 3.

||Միք. 3. 12.

իւր՝ և ա̄մ իշխանք զա̄մ բանս նր̄ . և խնդրէին սպանանել զնա ։ և լուաւ Ուրիա՝ երկեաւ՝ և փախեաւ. և գնաց յերկիրն եգիպտացւոց ։ 22 *Եւ առաքեաց արքայ յովակիմ արս յեգիպտոս. զեղնաթան որդի աքոբերայ. և արս ընդ նմա յեգիպտոս ։ 23 *Եւ հանին զնա անտի՝ և ածին առ արքայ յովակիմ. և սպանին զնա սրով. և ընկեցին 'ի շիրիմ որդւոց ժողովրդեան իւրոյ։ 24 *Բայց ձեռն աքիկամայ որդւոյ սափանիայ էր ընդ երեմիայի. զի մի՛ մատնեսցի 'ի ձեռս ժողովրդեանն սպանանել զնա։

## ԳԼ. ԻԷ.

1 Ի սկզբան թագաւորութե յովակիմայ որդւոյ յոսեայ՝ թագաւորի յուդայ. եղև բանս այս առ երեմիայ 'ի Տէ̄ և ասէ։ 2 *Այսպէս ասէ Տր̄ ցիս։ արա դու քեզ կապանս՝ և անուրս՝ և արկ ընդ պարանոց քո։ 3 *Եւ առաքեսցես զայն առ թագաւորն եդովմայեցւոց. և առ թագաւորն մովաբացւոց. և առ թագաւորն որդւոցն ամօնայ. և առ թագաւորն տիւրոսի. և առ թագաւորն սիդոնացւոց 'ի ձեռն հրեշտակաց նց̄՝ որք գան յընդառաջ սեդեկիայ արքայ յուդայ։ 4 *Եւ պատուիրեսցես նոցա ասել ցտեարս իւրեանց. այսպէս ասէ Տր̄ զօրութեց Ած̄ իէլի. այսպէս ասասջիք ցտեարսն ձեր։ 5 *Ես արարի զերկիր. և զմարդիկ՝ և զանասունս՝ և որ ինչ 'ի վր̄ երեսաց երկրի, զօրութբ̄ իմով մեծաւ՝ և բազկաւ բարձու. և տաց զնա՝ ում կամ իցէ առաջի աչաց իմոց։ 6 *Եւ արդ ես եմ՝ որ ետու զա̄մ երկիր 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց ծառայի իմոյ. նաև զգազանս անապատի 'ի գործ արկանել. և ետու նմա 'ի ծառայութի։ 7 *Եւ ծառայեսցեն նմա ա̄մ ազգք. և որդւոց նր̄. և որդւոց որդւոց նորա. մինչև եկեսցէ ժամանակ բարկութե երկրի նր̄. և ծառայեսցեն նմա ազգք բազումք. և թագաւորք մեծամեծք։ 8 *Եւ եղիցի ազգ և թագաւորութի որ ոչ ծառայեսցէ նաբուգոդոնոսորայ արքայի բաբելացւոց. և որք միանգամ ոչ մուծցեն զպարանոցս իւրեանց ընդ լծով արքային բաբելացւոց. սրով՝ և սովով՝ և մահուամբ արարից այցելութի 'ի վր̄ ազգին այնորիկ՝ ասէ Տր̄. մինչև սատակեսցին 'ի ձեռաց նր̄։ 9 *‖Եւ դուք մի՛ լսէք մարգարէից ձերոց. և ըղձութեց ձերոց. և երազոց ձերոց. և կիւսից ձերոց. և հմայից ձերոց. և կախարդաց ձերոց. և որք ասեն ձեզ՝ թէ ոչ հարկիցէք արքային բաբելացւոց։

‖ Վեր. 23.16. Վար. 29.8.

10 *Զի սուտ մարգարէանան դոքա ձեզ. առ 'ի հեռացուցանելոյ զձեզ յերկրէդ ձերմէ. և ցրուեցից զձեզ՝ և կորիջիք։ 11 *Եւ ազգ՝ որ մուծանիցէ զպարանոց իւր ընդ լծով արքային բաբելացւոց, և կայցէ նմա 'ի հարկի, թողից զնա յերկրի իւրում՝ ասէ Տր̄. և գործեսցէ զնա. և բնակեսցի 'ի նմա։ 12 *Եւ առ սեդեկիայ արքայ յուդայ խօսեցայ ըս̄ ա̄մ բանիցս այսոցիկ՝ և ասեմ. մուծէք զպարանոցս ձեր ընդ լծով արքային բաբելացւոց՝ և ծառայեցէք նմա, և ազգի նր̄՝ և կեցջիք։ 13 *Եւ ընդէ՞ր մեռանիք՝ դու և ժողովուրդ քո. սրով և սովով. և մահուամբ՝ ո̄պ խօսեցաւ Տր̄ առ ազգ՝ որ ոչ ծառայեսցէ արքային բաբելացւոց։ 14 *Եւ մի՛ լսէք բանից մարգարէիցն՝ որք ասեն ձեզ՝ թէ մի՛ հարկիք արքային բաբելացւոց։ 15 զուր մարգարէանան նոքա։ *‖Զի ո՛չ առաքեցի զնոսա՝ ասէ Տր̄։ և նք̄ մարգարէանան յանուն իմ սուտ՝ առ 'ի կորուսանել զձեզ. և կորիցէք դուք՝ և մարգարէքդ՝ որք մարգարէանան ձեզ 16 տարապարտուց ստութբ̄։ *Եւ ցքահանայս՝ և ցա̄մ ժողովուրդն՝ զոր խօսեցայ՝ ասացեր. այսպէս ասէ Տր̄. մի՛ լսէք բանից մարգարէիցն՝ որք մարգարէանան ձեզ՝ և ասեն. ահա՛ սպաս տանն Տն̄ դարձցի 'ի բաբելոնէ այժմ ընդ հուպ։ զուր մարգարէանան ձեզ՝ և ես 17 ո՛չ առաքեցի զնոսա։ *Մի՛ լսէք նց̄. այլ ծառայեցէք արքային բաբելացւոց՝ և կեցէք. ընդէ՞ր լինիցի քաղաքդ 18 աւերակ։ *Եթէ մարգարէք իցեն՝ և իցէ բան Տն̄ 'ի նոսա. եկեսցեն՝ յանդիման լիցին ինձ. զի այսպէս ասէ Տր̄. և մնացեալ սպասն՝ զոր ոչ էառ արքայն բաբելացւոց յորժամ գերեաց զյեքոնիայ յէնմէ 'ի բաբելոն երթիցէ, ասէ Տր̄ զօրութեց. այլ վն̄ չերթելոյ սպասուցն մնացելոյ 'ի տանն Տն̄ և 'ի տանն թագաւորին յուդայ յէնմէ 'ի բա19 բելոն։ *Այսպէս ասէ Տր̄ զօրութեց ‖վասն սեանցն. և վասն ծովուն. և վն̄ մեքենովթիցն. և մնացորդաց սպասուցն՝ որք մնացին 'ի քաղաքիդ յայդ20 միկ։ *Զոր ո՛չ էառ նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց 'ի գերելն իւրում զյեքոնիայ զորդի յովակիմայ արքայի յուդայ յէնմէ 'ի բաբելոն՝ և զա̄մ ա21 զատսն յուդայ՝ և էնմի ։ *Այսպէս ասէ Տր̄ զօրութեց՝ Ած̄ իէլի. վասն սպասուցն մնացելոց 'ի տանն Տն̄. և 'ի տանն թագաւորին յուդայ՝ և յէնմ։ 22 *'Ի բաբելոն երթիցեն. և անդ եղիցին՝ մինչև յաւուր յորում այց արարից նց̄։

‖ Վեր. 14.14. և 23.21 Վար. 29.9.

‖ Դ Թագ. 25.13.

նց ։ այսպէս ասէ Տր՝ հանից զնոսա . և դարձուցից 'ի տեղիդ յայդ ։

## Գլ: ԻԸ.

1 Եւ եղև յամին յայնմիկ 'ի սկզբան թագաւորութեն յովակիմայ արքայի յուդայ . յամին չորրորդի՝ յամսեանն հինգերորդի. ասէ ցիս անանիա որդի ազովրայ սուտ մարգարէ 'ի գաբաւոնէ 'ի տան Տն առաջի քահանայիցն և ամ ժողովրդեանն ։ 2 *Այսպէս ասէ Տր զօրութեց Այ իէլի . խորտակեցի լուծ արքային բաբելացւոց ։ 3 *Յետ այլևս երկուց ամաց աւուրց ։ և ես դարձուցից 'ի տեղիդ յայդ զամ սպաս տան Տն . զոր միանգամ էառ նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց 'ի տեղւոջէդ յայդմանէ , և տարաւ 'ի բաբիլոն ։ 4 *Եւ զյեքոնիայ որդի յովակիմայ արքայի յուդայ՝ և զամ գերութի հրէաստանի . որք մտին 'ի բաբիլոն՝ դարձուցից ես 'ի տեղիս յայս՝ ասէ Տր . և զյեքոնիայ՝ և զգերութիւն յուդայ . զի խորտակեցից զլուծ արքային բաբելացւոց ։ 5 *Եւ ասէ երեմիա մարգարէ ցանանիայ սուտ մարգարէ . առաջի քահանայիցն և առաջի ամ ժողովրդեանն՝ որք կային 'ի տան Տն ։ 6 *Արդարև այդպէս արասցէ Տր . հաստատեսցէ զբան քո՝ զոր մարգարէացար . դարձուցանել զսպաս տանդ այդորիկ՝ և զամ գերին 'ի բաբիլոնէ 'ի տեղիս յայս ։ 7 *Բայց լուարո՛ւք զպատգամ Տն՝ զոր ես ասեմ յականջս ձեր . և յականջս ամ ժողովրդեանդ ։ 8 *Մարգարէք որք եղեն յառաջքան զիս՝ և յառաջքան զքեզ յաւիտենից . և մարգարէացան 'ի վր բազում աշխարհաց՝ և մեծամեծ թագաւորութեց , 'ի պատերազմ՝ և 'ի չարիս՝ և 'ի մահ ։ 9 *Մարգարէ՝ որ մարգարէանայ զխաղաղութի . և լինիցի բան մարգարէին. ծանիցես զմարգարէն . զոր առաքեաց նոցա Տր հաւատարմութբ ։ 10 *Եւ էառ անանիա մարգարէ առաջի ամ ժողովրդեանն զանուրսն 'ի պարանոցէ երեմիայ մարգարէի՝ և խորտակեաց ։ 11 *Եւ ասէ անանիա առաջի ամ ժողովրդեանն . այսպէս ասէ Տր . այդպէս խորտակեցից զլուծ նաբուգոդոնոսորայ արքայի բաբելացւոց. յետ երկուց ամաց աւուրց 'ի պարանոցէ ամենայն ազգաց ։ 12 *Եւ գնաց երեմիա մարգարէ զճանապարհս իւր ։ և եղև բան Տն առ երեմիայ յետ խորտակելոյ անանիայ մարգարէի զանուրսն 'ի պարանոցէ երեմիայ մարգարէի . և ասէ ։ 13 *Երթ՝ խօսեաց ը անանիայ՝ և ասաս ցես . այսպէս ասէ Տր . անուրս փայտեղէնս խորտակեցեր . և արարից ընդ այնր անուրս երկաթիս ։ 14 *Զի այսպէս ասէ Տր զօրութեց Այ իէլի ։ լուծ երկաթի եդի 'ի վերայ պարանոցի ամ ազգացդ այդոցիկ՝ հարկիլ նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց . և ծառայեսցեն նմա . նաև զգազանս անապատի ետու նմա ։ 15 *Եւ ասէ երեմիա մարգարէ , ցանանիայ մարգարէ ։ արդ՝ լո՛ւր անանիա . ո՛չ առաքեաց զքեզ Տէր . և դու զուր յուսացուցեր զժողովուրդդ զայդ 'ի նանրութիւ ։ 16 *Վս այդորիկ այսպէս ասէ Տր . ահա ես արձակեցից զքեզ յերեսաց երկրիդ . և 'ի սմին տարւոջ մեռցիս դու ։ զի զխոտորումն խօսեցար 'ի Տէ ։ 17 *Եւ մեռաւ անանիա մարգարէ յամին յայնմիկ՝ յամսեանն եօթներորդի ։

## Գլ: ԻԹ.

1 Եւ այս բանք են թղթոյն՝ զոր առաքեաց երեմիա մարգարէ յէ՛մ առ ծերս գերութեն . և առ քահանայս՝ և առ սուտ մարգարէսն . թուղթ 'ի բաբիլոն առ գերին և առ ամ ժողովրդն . զորս գերեաց նաբուգոդոնոսոր յէ՛մ 2 'ի բաբիլոն ։ *Յետ ելանելոյ յեքոնիայ արքայի . և տիկնոջն . և ներքինեաց . և իշխանաց յուդայ յէ՛մ . և ամ ազատաց . և արուեստաւորաց . և կալանաւորակապաց յէ՛մ ։ 3 *'Ի ձեռն եղամեայ որդւոյ սափանայ . և գամարեայ որդւոյ քեղկեայ ։ զորս առաքեաց սեդեկիա արքայ առ նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց 'ի բաբիլոն՝ և ասէ ։ 4 *Այսպէս ասէ Տր զօրութեց Այ իէլի վս գերութեդ՝ որ գերեցաւ յէ՛մ 'ի 5 բաբիլոն ։ *Տունս շինեցէ՛ք , և բնակեցէք . դրախտս տնկեցէք . և կերայք զպտուղս նց ։ 6 *Առէք կանայս , և եղիցին ուստերք և դստերք . և առէք կանայս ուստերաց ձերոց . և զդստերս ձեր տո՛ւք արանց ։ և ծնցին ուստերս և դստերս . և բազմասջիք այդր . և մի՛ 7 նուազեսջիք ։ *Եւ կեցջիք խաղաղութբ յերկրիդ . յոր գերեցի զձեզ այդր ։ և աղօթս արարէք 'ի վր դոցա առ Տր . զի 'ի դոցա խաղաղութեն եղիցի և 8 ձեզ խաղաղութի ։ *Զի այսպէս ասէ Տր զօրութեց Այ իէլի . մի՛ հրապուրեսցեն զձեզ սուտ մարգարէքդ ձեր՝ որք 'ի միջի ձերում են . և ըղձապատումք ձեր . և մի՛ անսայք երազոց ձե- 9 րոց . զոր դուք տեսանէք ։ *Զի սուտ մարգարէանան դոքա ձեզ յանուն իմ . 10 և ես ո՛չ առաքեցի ասէ Տր ։ *Զի այսպէս ասէ Տր . յորժամ մերձ իցէ 'ի բա-

2. Մնա. 36. 21. 2. Եզր. 1. 1. Դանէ. 9. 2.

բաբելոն՝ 'ի լնուլ եօթանասուն ամ, այց արարից ձեզ. և հաստատեցից 'ի վերայ ձեր զբանս իմ զբարիս. դարձուցանել զձեզ 'ի տեղիս յայս։ 11 * Զի ես գիտեմ զխորհուրդս՝ զոր խորհիմ. և խորհեցայ 'ի վերայ ձեր՝ ասէ Տր, խորհուրդ խաղաղութե և ոչ չարութե. տալ ձեզ յետ այդորիկ յայս. 12 * Եւ կարդասջիք առ իս. և երթիջիք՝ և յաղօթս կացջիք առ իս՝ և լուայց ձեզ ։ 13 * Եւ խնդրեսջիք զիս՝ և գտջիք. զի խնդրիցէք զիս յամ՝ սրտէ ձերմէ ։ 14 * Եւ երևեցայց ձեզ ասէ Տր. և դարձուցից զգերութիւն ձեր. և ժողովեցից զձեզ յամ ազգաց. և յամ տեղեաց ուր ցրուեցի զձեզ անդր՝ ասէ Տր. և դարձուցից զձեզ 'ի տեղիդ՝ ուստի գերեցի զձեզ այտի։ 15 * Զի ասացիք՝ թէ կացոյց Տր 'ի մեզ մարգարէս 'ի բաբելոն։ 16 * Զի այսպէս ասէ Տր ցթագաւորդ՝ որ նստի յաթոռ դաւթի. և ցամենայն ժողովուրդդ՝ որ բնակեալ է 'ի քաղաքիդ յայդմիկ. եղբարք ձեր՝ որք ոչ ելին ընդ ձեզ 'ի գերութի ։ 17 * Այսպէս ասէ Տր զօրութեց. ‖ ահաւասիկ ես առաքեմ 'ի ձեզ սով՝ և սուր՝ և մահ. և արարից զնս իբրև զթուզ ժանտ սուարիմ. որ ոչ ուտիցի 'ի ժանտութե իւրմէ։ 18 * Եւ հալածեցից զնոսա սրով՝ և սովու՝ և մահուամբ. և տաց զնոսա 'ի շարժումն ամ թագաւորութեց երկրի 'ի նզովս՝ և յապականութիւն՝ և 'ի շչիւն՝ և 'ի նախատինս՝ 'ի մէջ ամենայն ազգաց. ուր ցրուեցի զնոսա անդր։ 19 * Փոխանակ զի ոչ լուան բանից իմոց՝ ասէ Տր. զի առաքեցի առ նոսա զծառայս իմ զմարգարէս կանխեալս՝ և առաքեալ. և ոչ լուայք՝ ասէ Տր ։ 20 * Եւ դուք լուարուք զբան Տն ամ գերիդ՝ զոր առաքեցի յերէմէ 'ի բաբելոն։ 21 * Այսպէս ասէ Տր զօրութեց Ած իղի. 'ի վերայ աքիաբայ որդւոյ կողեայ. և 'ի վերայ սեդեկիայ որդւոյ մասսայ՝ որք մարգարէանան ձեզ յանուն իմ զուր. ահաւասիկ ես տաց զնս 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց. և սատակեսցէ զնոսա առաջի աչաց ձերոց։ 22 * Եւ առցեն 'ի նոցանէ անէծս 'ի մէջ ամ գերութեն յուդայ՝ որ է 'ի բաբելոն՝ և ասասցեն. արասցէ զքեզ Տր՝ զոր արար սեդեկիայ՝ և աքիաբայ. զոր տապակեաց արքայն բաբելացւոց 'ի հուր։ 23 * Վասն զի գործեցին զանօրէնութիւս յիղի. և շնացան ընդ կանայս քաղաքայնոց իւրեանց. և խօսէին պատգամս յանուն իմ սուտ. զոր ոչ հրամայեցի նոցա. և ես ինձէն իրագէտ՝ և վկայ եմ՝ ասէ Տէր ։

‖ Մէր. 24. 8.

24 * Եւ ցսամեայ եղեմացի ասասցես։ 25 * Այսպէս ասէ Տր զօրութեց Ած իղի. փոխանակ զի առաքեցեր դու յանուն իմ թուղթս առ ամ ժողովուրդս իմ. և ես ոչ առաքեցի զքեզ յանուն իմ. և առ սոփոնիայ որդի մասսայ քահանայի՝ և առ ամ քահանայս ասել ։ 26 * Թէ Տր ետ զքեզ քահանայ փոխանակ յովիդայեայ քահանայի լինել վերակացու 'ի տան Տն ամ մարդոյ՝ որ մարգարէանայ. և 'ի վերայ ամի՝ որ պատմէ զըղձութի. և տացես զնս յարգելան վերնադրանդն։ 27 * Եւ արդ՝ ընդէր ոչ արարիք զպատուհաս երեմիայի անաթովթացւոյ՝ որ մարգարէանայ ձեզ ։ 28 * Զի առաքեաց առ մեզ 'ի բաբիլոն, և ասէ. թէ հեռի է ժամանակն. շինեցէք տունս՝ և բնակեցէք. տնկեցէք դրախտս՝ և կերէք զպտուղ նոցա։ 29 * Եւ ընթերցաւ սոփոնիա քահանայ զթուղթն յականջս երեմիայի մարգարէի ։ 30 * Եւ եղև բան Տն առ երեմիայ՝ և ասէ ։ 31 * Առաքեա առ ամ գերիսն՝ և ասասցես. այսպէս ասէ Տր 'ի վր սամեայ եղեմացւոյ. փոխանակ զի մարգարէացաւ ձեզ սամա՝ և ես ոչ առաքեցի զնա. և յուսացոյց զձեզ 'ի նանրութի ։ 32 * Վասն այսորիկ այսպէս ասէ Տր. ահաւասիկ ես արարից հանդէս 'ի վր ամ եղեմացւոց և 'ի վերայ ազգի դորա. և ոչ եղիցի դորա մարդոք՝ որ նստիցի 'ի միջի ձերում տեսանել զբարութիւն՝ զոր ես արարից ձեզ՝ ասէ Տր. զի խոտորումն խօսեցաւ 'ի Տէ։

## Գլ. Լ.

1 Բանն՝ որ եղև առ երեմիա 'ի Տէ ասել։ 2 * Այսպէս ասէ Տէր Ած իղի. գրեա դու քեզ զամ բան՝ զոր ետու քեզ հրաման, 'ի մատեանի։ 3 * Զի ահա աւուրք գան ասէ Տր. և դարձուցից զգերութի ժողովրդեան իմոյ իղի և յուդայ՝ ասէ Տր. և դարձուցից զնոսա յերկիրդ՝ զոր ետու հարց նոցա՝ և տիրեսցեն դմա ։ 4 * Եւ այս բանք են՝ զորս խօսեցաւ Տր 'ի վերայ իղի և յուդայ։ 5 * Այսպ ասէ Տր՝ ձայն ահի լուիջիք. և ձայն ահեղ դուժի. յորմէ դողասցեն մէջք՝ և փրկութի և խաղաղութի ոչ իցէ ։ 6 * Հարցէք՝ և տեսէք՝ եթէ ծնանի ուրեք արու. զի տեսի զամ այր՝ և ձեռք իւր 'ի վր միջոյ իւրոյ իբրև ծննդականի. և դարձան երեսք ամ 'ի գոյն դալկան։ 7 * ‖ Վայ զի մեծ է օրն այն. և չիք այնպիսի. և անհընարին նեղութի է ժամանակն յակոբայ. և ապրեսցի 'ի նմանէ ։ 8 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր զօրութեց. խոր-

‖ Յովէլ. 2. 2. և 11. Աւմոս. 5. 18. Սոփոն. 1. 15.

խորտակեցից զլուծն 'ի պարանոցէ նո՛ց. և զկապանս նոցա խզեցից ․ և ո՛չ ևս կացցեն նոքա 'ի հարկի օտարաց։ *Ա.յլ 9 հարկեսցեն Տ՟ն Ա.Յ իւրեանց. և զդաւիթ արքայ իւրեանց յարուցից նոցա։

*Բայց դու մի՛ երկնչիր ծառայ իմ 10 յակոբ՝ ասէ Տ՟ր ․ և մի՛ զարհուրեսցիս իՂ. զի ահաւադիկ ես փրկեցից զքեզ 'ի հեռաստանէ ․ և զզաւակ քո յերկրէ գերութեան նոցա ․ և դարձցի յակոբ՝ և դադարեսցէ. և բարեկեցիկ լիցի ․ և ո՛չ իցէ՝ որ զարհուրեցուսցէ ։ * Օ՟ր 11 ընդ քեզ եմ՝ ասէ Տ՟ր՝ 'ի փրկել զքեզ. զի արարից նո՛ւազութիւն 'ի մէջ ազգաց. յորս ցրուեցի զքեզ անդր ․ և զքեզ ո՛չ արարից վախճան ․ և խրատեցից զքեզ իրաւամբք ․ և քաւելով ո՛չ քաւեցից զքեզ ։ *Ա.յսպէս ասէ Տ՟ր ․ սաստկա_ 12 ցուցի զբեկումն քո ․ և ցաւադի՛նք են հարուածք քո ։ *Ո՛չ՛ք է՝ որ դատէ զդա 13 տաստանս քո ․ 'ի ցաւս բժշկեցար ․ և օգուտ ո՛չ եղև քեզ ։ *Ա.մենայն բարե 14 կամք քո մոռացան զքեզ ․ և ո՛չ հարցա նիցեն զքէն ․ զի զհարուածս թշնամ ւոյ հարի զքեզ՝ խրատ սաստիկ վասն ա՟մ անիրաւութեց քոց ․ բազմացան մեղք քո ։ * Օ՟ր գոչես 'ի վ՟ր բեկման 15 քոյ՝ սակայն ո՛չ արարից քեզ վախճան. բուռն են ցաւք քո ․ վ՟ս բազմութեան անօրէնութեան քոյ սաստկացան ․ մեղք քո արարին քեզ զայդ ։ *Վ՟ն այդորիկ 16 ամենեքեան որք ուտէին զքեզ՝ կերի_ ցին. և ա՟մ թշնամիք քո կերիցեն զմար մինս իւրեանց ․ (վ՟ս բազում անիրաւ_ ութեց քոց՝ որք յաճախեցին ․ և մեղք քո արարին քեզ զայդ ․) և եղիցին ա_ պականիչք քո յապականութի՟. և զա՟մ աւարառուս քո տաց յաւար ։ * Օ՟ր ա_ 17 ծից զբժշկութի՟ քո 'ի ցաւագին վիրաց քոց ․ և բժշկեցից զքեզ ասէ Տէր ․ զի ցրուեալ կոչեցար սիոն ․ և դոյն է որս ձեր ․ զի որ խնդրիցէ , ո՛չ գտանիցէ զնա ։ *Ա.յսպէս ասէ Տ՟ր ․ ահաւադիկ 18 ես դարձուցից զվտարանդութի՟ յար_ կացն յակոբայ ․ և գերութեան ն՟ր ողոր մեցայց ․ և շինեսցի քաղաքն 'ի բարձ_ րութէ իւրում. և տաճարն ը՟ս իրաւանց իւրոց կանգնեսցի ։ *Ե՛լ ելցեն 'ի դո_ 19 ցանէ երգիչք՝ և ձայն խաղալկաց ․ և բազմացուցից զդոսա՝ և մի՛ նուազես ցին ․ տարածեցից զդոսա՝ և մի՛ նուա զեսցին ։ *Ե՛լ մտանիցեն դոքա իբրև 20 զառաջինն ․ և վկայութիւք դոցա կան գուն կացցեն առաջի աչաց իմոց ․ և հանդէս արարից 'ի վ՟ր նեղչաց դոցա ։ * Ե՛լ եղիցին բռնաւորք քան զնոսա 21 'ի վերայ նոցա ․ և իշխան դոցա 'ի դո_ ցանէ ելցէ ․ և ժողովեցից զդոսա՝ և դարձցին առ իս ․ զի ո՛վ է այն՝ որ ետ զսիրտ իւր դառնալ առ Տ՟ր՝ ասէ Տ՟ր ։

22 *Ե՛լ եղիջիք ինձ 'ի ժողովուրդ ․ և ես եղէց ձեզ յԱ.Ծ ։ 23 * Օ՟ր բարկութիւն Տ՟ն ել ցասմամբ ․ և բարկութի՟ մըր_ 24 կեալ 'ի վ՟ր ամպարշտաց ։ *Եկեսցէ՟ և մի՛ դարձցի բարկութի սրտմտութե՟ Տ՟ն՝ մինչև արասցէ. և կատարեսցէ զյօ ժարութի՟ սրտի իւրոյ ․ 'ի վախճանի աւուրց ծանիջիք զայն ։

## ԳԼ: ԼԱ.

1 Ի ժամանակի յայնմիկ՝ ասէ Տ՟ր ․ և եղէց յԱ.Ծ ազգիդ իՂի՝ և դոքա 2 եղիցին ինձ 'ի ժողովուրդ ։ *Ա.յսպէս ասէ Տ՟ր ․ գտի տապ յանապատի անդ ․ սատակելովքն հանդերձ սուսերաւ ․ 3 երթայք՝ մի՛ սատակէք զիՂ ։ * Բացէ իբաց Տ՟ր երևեցաւ նմա ․ 'ի սէր յաւի տենական սիրեցի զքեզ ․ վ՟ս այնորիկ 4 ձգեցի զքեզ 'ի գթութի ։ *Դարձեալ շինեցից զքեզ. և շինեսջիր կոյսդ իՂի. դարձեալ առցես զթմբուկ՝ և ելցես 5 ընդ ժողովս խաղալկաց ։ *Դարձեալ տնկեսջիք այգիս 'ի լերինս սամարիայ. տնկեսջիք տունկս՝ և օրհնեսջիք ։

6 * Օ՟ր հասեալ է օր կոչման հրաւիրա_ կի 'ի լերինս եփրեմի ․ Արիք՝ և ելցուք 7 'ի սիօն առ Տ՟ր Ա.Ծ մեր ։ * Ա.յսպէս ասէ Տ՟ր՝ ցնծութի առնել յակոբայ ․ ուրախ լերուք՝ և գոչեցէք 'ի վ՟ր գլխոյ ազգաց ․ լսելի՛ արարէք՝ օրհնեցէք՝ և ասացէք ․ փրկեաց Տէր զժողովուրդ 8 իւր զմնացորդս իՂի ։ * Ա.հաւադիկ ես ածից զնոսա յերկրէ հիւսիսոյ ․ և ժողովեցից զնոսա 'ի ծագաց երկրի 'ի տօն պասեքի ․ և ծնցին որդիս 'ի բազ մութիւն յոյժ 'ի միջի նոցա ․ կոյրն՝ և կաղն՝ և յղին՝ և ծնեալն՝ միահամուռ ժողովուրդ մեծ դարձցին այսր ։

9 *Լալով ելին ․ և մխիթարութե՟ ածից զնոսա ․ հանգուցանել 'ի վերայ ջուրց վտակաց՝ ընդ ճանապարհ ուղիղ՝ և մի՛ մոլորեսցին 'ի նմա ․ զի եղէ իսրայէլի 'ի հայր ․ և եփրեմ անդրանիկ իմ է ։

10 *Լուարո՛ւք զպատգամ Տ՟ն ազգք ․ և պատմեցէ՛ք 'ի կղզիս հեռաւորս՝ և ա_ սացէք ․ որ հոլովեաց զիՂ՝ ժողովես ցէ զնա ․ և պահեսցէ զնա իբրև զառա 11 րածական զհօտ իւր ։ * Օ՟ր փրկեաց Տ՟ր զյակոբ ․ և ապրեցոյց զնա 'ի ձե_ 12 ռաց բռնաւորաց նորա ։ * Եկեսցեն՝ և ուրախ լիցին՝ և ցնծասցեն 'ի լերինն սիօնի ․ եկեսցեն 'ի բարութի Տ՟ն՝ յեր_ կիր ցորենոյ՝ և գինւոյ՝ և պտղեանց՝ և խաշանց արջառոյ՝ և ոչխարի՝ և եղի_ ցին անձինք նոցա իբրև զծառ պտղա 13 լից ․ և ո՛չ ևս քաղցիցեն ։ * Յայնժամ

ցնծաս_

ցնծասցեն կոյսք 'ի ժողովս երիտասարդաց. և ծերք խնդասցեն. և դարձուցից զսուգ նոցա 'ի խնդութիւն և ուրախ արարից զնոսա 'ի տրտմութենէ իւրեանց։
14 * Օմայլեցուցից՝ և արբեցուցից զանձինս քահանայից որդւոցն ղևեայ. և ժողովուրդ իմ լցցի իմովք բարութեամբք՝ ասէ Տէր։
15 * Այսպէս ասէ Տէր. ‖ ձայն 'ի հռամայ լսելի եղև՝ ողբումն և լալումն՝ և գուժումն. ռաքէլ լայր զորդիս իւր՝ և ոչ կամէր մխիթարիլ 'ի վերայ որդւոց իւրոց՝ զի ոչ գոյին։
16 * Այսպէս ասէ Տէր՝ դադարեսցէ անձն քո 'ի լալոյ. և աչք քո յարտասուաց. զի գոն վարձք գործոց քոց՝ ասէ Տէր. և դարձցին յերկրէ թշնամեաց։
17 * Եւ եղիցի յոյս վախճանի քոյ՝ ասէ Տէր, բնակաւոր որդւոց քոց 'ի սահմանս նոցա։
18 * Լսելով լուայ զողբումն եփրեմի. խրատեցեր զիս Տէր, և խրատեցայց. և ոչ ուսայց իբրև զընկուզ տրմուղ. դարձո զիս, և դարձայց՝ զի դու ես Տէր Աստուած իմ։
19 * Եւ յետ գերութեան իմոյ ապաշաւեցի. և յետ իմանալոյ իմոյ յոգւոց հանէի՝ 'ի վերս ցաւուր ամօթոյն իմոյ. և ցուցի քեզ թէ առի նախատինս 'ի մանկութենէ իմմէ։
20 * Եթէ որդի սիրելի իցէ իմ եփրեմ մանուկ գրգանաց՝ փոխանակ զի բանք իմ են 'ի նմա. յիշելով յիշեցից զնա միւսանգամ. վասն այնորիկ փութացայց յաղագս նորա. ողորմելով ողորմեցայց նմա՝ ասէ Տէր։
21 * Մատիր անձամբ անձին՝ արա դու քեզ սիոն պատուհաս. ընկեա զսիրտ քո 'ի թիկունս. գնա զճանապարհ՝ դարձիր կոյս իսրայէլի, դարձիր անդրէն 'ի քաղաքս քո սգացեալ։
22 * Մինչև յերբ թափառիցիս դուստր անարգեալ. զի հաստատեաց Տէր զփրկութիւն 'ի ձեռատունկն նորա. փրկութեամբ շրջեսցին մարդիկք։
23 * Այսպէս ասէ Տէր զօրութեանց Աստուած իսրայէլի. դարձեալ ասասցեն զբանս զայս յերկրին յուդայ՝ և 'ի քաղաքս նորա. յորժամ դարձուցից զգերութիւն նորա, օրհնեալ է Տէր. յարդար և 'ի սուրբ լերին իւրում։
24 * Եւ բնակիչքն հրէաստանի ամենայն քաղաքօքն իւրեանց, և գործաւորօքն, յղփասցին հօտիւքն։
25 * Զի արբուցի զամենայն անձն ծարաւի. և զամենայն անձն քաղցեալ լցուցի։
26 * Վասն այնորիկ զարթեայ՝ և տեսի. և քուն իմ քաղցրացաւ ինձ։
27 * Ահա աւուրք գան՝ ասէ Տէր. և սերմանեցից զտունն իսրայէլի. և զտունն յուդայ 'ի զաւակ մարդկան՝ և 'ի զաւակ անասնոյ։
28 * Եւ եղիցի զորօրինակ զարթուցեալ էի 'ի վերայ նոցա՝ 'ի խլել և 'ի կործանել, 'ի քակել և 'ի կորուսանել՝ և 'ի չարչարել, նոյնպէս զարթեայց 'ի վերայ նոցա. 'ի շինել և 'ի տնկել՝ ասէ Տէր։
29 * Յաւուրս յայնոսիկ մի ևս ասասցեն՝ թէ ‖ հարք ագոխ կերին. և որդւոց ատամունք առան։
30 * Այլ իւրաքանչիւր 'ի մեղս իւր մեռցի ամենայն մարդ. և որ ուտիցէ զագոխն, նորին ատամունք առցին։
31 * ‖ Ահաւասիկ աւուրք գան ասէ Տէր. և ուխտեցից տանն իսրայէլի՝ և տանն յուդայ ուխտ նոր։
32 * Ոչ ըստ ուխտին զոր ուխտեցի ընդ հարս նոցա՝ յաւուր յորում առի զձեռանէ նոցա՝ հանել զնոսա յերկրէն եգիպտացւոց. զի նոքա ոչ կացին յուխտին իմում, և ես անփոյթ արարի զնոցանէ՝ ասէ Տէր։
33 * Այլ այս է ուխտ՝ զոր ուխտեցից տանն իսրայէլի յետ աւուրցն այնոցիկ՝ ասէ Տէր. ‖ տաց զօրէնս իմ 'ի միտս նոցա՝ և 'ի սիրտս նոցա գրեցից զնոսա. և եղէց նոցա յԱստուած. և նոքա եղիցին ինձ 'ի ժողովուրդ։
34 * Եւ մի ևս ուսուցանիցեն իւրաքանչիւր զընկեր իւր. իւրաքանչիւր զեղբայր իւր ասել՝ թէ ծանիր զՏէր. զի ամենեքեան ծանիցեն զիս 'ի փոքրկանց նոցա մինչև 'ի մեծամեծս՝ ասէ Տէր. ‖ զի քաւիչ եղէց անիրաւութեանց նոցա. և զմեղս նոցա ոչ ևս յիշեցից։
35 * Այսպէս ասէ Տէր՝ որ ետ զարեգակն 'ի լոյս տուընջեան հաստատութեամբ. զլուսին և զաստեղս 'ի լոյս գիշերոյ. և աղաղակ 'ի ծովու. և գոչեն ալիք նորա. Տէր ամենակալ անուն է նորա։
36 * Եւ եթէ դադարեսցեն օրէնքս այսոքիկ յերեսաց իմոց՝ ասէ Տէր. ապա և ազգն իսրայէլի դադարեսցէ 'ի լինելոյ ազգ առաջի աչաց իմոց զամենայն աւուրս։
37 * Այսպէս ասէ Տէր՝ եթէ վերասցին երկինք 'ի բարձունս. և եթէ խոնարհեսցին յատակք երկրի 'ի խոնարհ. ես ոչ խոտեցից զամենայն ազգն իսրայէլի՝ ասէ Տէր՝ վասն ամենայնի զոր արարին։
38 * Ահա աւուրք գան՝ ասէ Տէր. և շինեսցի քաղաք Տեառն. յաշտարակէ անանի անամայելի մինչև 'ի դուռն անկեան։
39 * Եւ ելցէ տակաւին կասկած. և չափ նորա յանդիման նոցա մինչև ցբլուրն գարեբայ. և բոլորեսցի շուրջանակի յընտիր ընտիր վիմաց։
40 * Եւ ամենայն ձորն փագադիմայ և մոխրոցն. և ամենայն սարեմօթն. մինչև 'ի ձորն կեդրոնի. մինչև ցանկիւն դրանն ասպատանացն արևելից՝ սրբութիւն Տեառն։ * Եւ մի ևս խլեսցի՝ և քակեսցի, և մի ևս մինչև յաւիտեան։

Marginal notes: ‖ Մատ. 2.18. — Եւ խրատեցայ, և ոչ ուսայ — յոգւոց հանէի 'ի վերայ աւուրց — 'ի ձեռատունկն նոր — ‖ Եզեկ. 18.2. — ‖ Եբրայ. 8.8. — ‖ Եր. 24.7. — Ղուկ. 1.73. — Եբրա. 10.16. — ‖ Գործ. 10.43. — Եւ ելցէ տակաւին կասկածին լար, և չափ

## ԳԼ: ԼԲ.

1 Բանն որ եղև 'ի Տեառնէ առ երեմիայ. յամի տասներորդի սեդեկիայ արքայի յուդայ. այն է ամ ութնուտասներորդ նաբուգոդոնոսորայ արքայի բաբելացւոց։
2 * Եւ յայնժամ զօր արքային

բաբելացւոց պաշարեաց զԵհմ. և Երեմիա մարգարէ կայր 'ի կալանս 'ի սրահի բանտին' որ էր յապարանս թագաւորին յուդայ: 3 *Զոր արգել զնա արքայ սեդեկիա' և ասէ. ընդէ՞ր դու մարգարէանաս' և ասես. այսպէս ասէ Տր. ահաւադիկ ես տամ զքաղաքդ զայդ 'ի ձեռս թագաւորին բաբելացւոց. և առցէ զդա: 4 *Եւ սեդեկիա արքայ յուդայ մի՛ ապրեսցի 'ի ձեռաց քաղդէացւոցն. զի մատնելով մատնեսցի 'ի ձեռս թագաւորին բաբելացւոց. և խօսեսցի բերան 'ի բերան ընդ նմա. և աչք դորա զաչս նր տեսցեն: 5 *Եւ 'ի բաբելոն մտցէ սեդեկիա, և անդ նստցի, մինչև այց արարից դմա' ասէ Տր: զի մարտնչիք ընդ քաղդէացիսն' ուստի ոչինչ յաջողիցիք: 6 *Եւ եղև բան Տն առ Երեմիայ' և ասէ: 7 *Ահաւադիկ անամայէլ որդի սեղոմայ հօր եղբօր քոյ գայ առ քեզ' և ասէ. ստացիր դու քեզ զագարակն իմ. որ է յանաթօթ. զի քեզ իսկ է անդ ըստ մերձաւորութե առնուլ 'ի ստացուած: 8 *Եւ եկն առ իս անամայէլ որդի սեղոմայ հօր եղբօր իմոյ, ըստ բանի Տն 'ի սրահ բանտին' և ասէ ցիս. ստացի՛ր զագարակն իմ. որ յանաթօթ' յերկրին բենիամինի. զի քեզ պարտէ ստանալ զժառանգութիւն. և դու իսկ երիցագոյն ես. և գիտացի' եթէ բան Տն է: 9 *Եւ ստացայ զագարակն յանամայելայ որդւոյ հօրեղբօր իմոյ' որ է յանաթօթ. և կշռեցի նմա արծաթ եօթն սիկղ և տասն արծաթոյ: 10 *Եւ գրեցի մուրհակ' և կնքեցի. և կացուցի վկայս. և կշռեցի զարծաթն 'ի կշիռս: 11 *Եւ առի զմուրհակս ստացուածոյն զկնքեալն' ըստ հրամանի և ըստ իրաւանց' և զյայտնին: 12 *Եւ ետու զմուրհակս ստացուածոյն ցբարուք որդի ներեայ' որդւոյ մաասայ առաջի անամայէլի որդւոյ հօրեղբօր իմոյ. և առաջի այնոցիկ' որք կային անդ. և գրեցին 'ի մուրհակի ստացուածոյն. և առաջի ամ հրէիցն' որք նստէին 'ի սրահի բանտին: 13 *Եւ պատուիրեցի բարուքայ առաջի նց և ասեմ: 14 *Այսպէս ասէ Տր ամենակալ Ած իղի: առ զմուրհակդ զայդ' և զմուրհակ ստացուածոյն կնքեալ. և զմուրհակն արձակ. և դիցես 'ի խեցեղէն աման' զի կացցէ աւուրս բազումս: 15 *Զի այսպէս ասէ Տր ամենակալ Ած իղի. դարձեալ ստացցին տունս' և ագարակս' և այգիս յերկրիդ յայդմիկ: 16 *Եւ կացի յաղօթս առ Տր. յետ տալոյն զմուրհակս ստացուածոյն ցբարուք որդի ներեայ'

17 և ասեմ: *Ո՛վ եղբ Տր Տր: դու արարեր զերկինս և զերկիր զօրութբ քով մեծաւ' և բազկաւ քով բարձու. զի ոչ ինչ է բան' որ ծածկեսցի 'ի քէն: 18 *Առնես զողորմութի 'ի հազար դարս' և հատուցանես զմեղս հարանց 'ի ծոց որդւոց իւրեանց յետ նց: Ած մեծ' և հզօր. Տր զօրութեց անուն նորա: 19 *Մեծ խորհրդովք' և զօրաւոր գործովք. ամենակալ մեծանուն Տր. աչք քո բաց են յամ ճանապարհս որդւոց մարդկան' տալ իւրաքանչիւր ըստ ճանապարհի իւրում և ըստ պտղոյ գնացից իւրոց: 20 *Որ արարեր նշանս' և արուեստս յերկրին եգիպտացւոց մինչև ցայսօր 'ի մէջ իղի. և 'ի մէջ ծննդոց երկրի. և արարեր քեզ անուն իբրև յաւուր յայսմիկ: 21 *Եւ հաներ զժողովուրդ քո զիղ յերկրէն եգիպտացւոց' նշանօք և արուեստիւք. հզօր ձեռամբ' և բարձր բազկաւ. և մեծամեծ տեսլեամբք: 22 *Եւ ետուր նց զերկիրս զայս' զոր երդուար հարցն նոցա' տալ նց զերկիր' որ բղխէ զկաթն' և զմեղր: 23 *Եւ մտին' և ժառանգեցին զնա. և ոչ լուան ձայնի քում. և ըստ հրամանաց քոց ոչ գնացին. զամ զոր պատուիրեցեր նց առնել. և ոչ արարին. և արարին պատահիլ իւրեանց զամ չարեացս այսոցիկ: 24 *Եւ արդ ահա հասեալ է զօր 'ի քաղաքս առնուլ զսա. և մատնեցաւ քաղաքս 'ի ձեռս քաղդէացւոց. որք տան ընդ սմա պատերազմ յերեսաց սրոյ' և սովու' և մահու' որպէս և խօսեցար' նոյնպէս և եղև' զոր դու իսկ տեսանես: 25 *Եւ դու Տր ասես ցիս ստացիր քեզ ագարակ արծաթոյ. և գրեցի մուրհակ' և կնքեցի. և կացուցի վկայս. և քաղաքս մատնեցաւ 'ի ձեռս քաղդէացւոցն: 26 *Եւ եղև բան Տն առ իս' և ասէ: 27 *Ահա ես Տր Ած ամ մսեղեաց. միթէ թաքչիցի ինչ բան յինէն: 28 *Վն այսորիկ այսպէս ասէ Տր. մատնելով մատնեսցի քաղաքդ 'ի ձեռս քաղդէացւոց. և 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքայի բաբելացւոց. և առցեն զդա: 29 *Եւ եկեսցեն քաղդէացիքն պատերազմիլ ընդ քաղաքիդ. և այրեսցեն զդա հրով. և հրձիգ արասցեն զտունս. յորս արկանէին խունկս 'ի վր տանեաց նոցա' բահաղու. և զոհէին զոհս աստուածոց օտարաց վն զիս դառնացուցանելոյ: 30 *Որդիքն իղի և որդիքն յուդայ միայն գործէին զչարիս առաջի աչաց իմոց 'ի մանկութէ իւրեանց: բայց որդիքն իղի բարկացուցին զիս գործովք ձեռաց իւրեանց 31 ասէ Տէր: *Ի բարկութի իմ. և 'ի սրտ-

սրտ-

սրտմտութիւն էր ինձ քաղաքդ այդ. յոր
մէ օրէ շինեցին զդա մինչև ցայսօր.
ջնջել զդա յերեսաց իմոց ։ * Վասն 32
ամ չարեաց որդւոցն Իղի և որդւոցն
յուդայ՝ զոր արարին 'ի դառնացուցա
նել զիս՝ ինքեանք՝ և թագաւորք իւր
եանց՝ և մեծամեծք իւրեանց՝ և քահա
նայք իւրեանց ։ և արք յուդայ՝ և բնա
կիչք Եհմի ։ * Դարձուցին յիս զթի_ 33
կունս մարգարէք իւրեանց. և ոչ զե_
րեսս. և ուսուցի զնս ընդ առաւօտս.
ուսուցի, և ոչ անսացին ընդունիլ ըզ
խրատ ։ * Եւ եդին զպղծութիւս իւր 34
եանց 'ի տան՝ յորոյ վերայ կոչեցաւ ա_
նուն իմ ։ * Եւ առ պղծութե իւրեանց 35
շինեցին բագինս բահաղու 'ի ձոր որդ
ւոյն Ենովմայ. մատուցանել զուստերս
և զդստերս իւրեանց մողոքայ. զոր ոչ
պատուիրեցի նց՝ և ոչ անկաւ 'ի սիրտ
իմ առնել նոցա զպղծութիւն զայն.
առ 'ի յանցուցանելոյ զյուդայ ։ * Եւ 36
արդ՝ այսպէս ասէ Տր Աձ Իղի. վասն
քաղաքիդ այդորիկ՝ զորմէ դու ասա_
ցեր՝ թէ մատնեսցի 'ի ձեռս նաբուգո
դոնոսորայ արքային բաբելացւոց. 'ի
սուր՝ և 'ի սով՝ և 'ի գերութի ։ * Ահա 37
ես ժողովեցից զնս յամ երկրէ. ուր
ցրուեցի զնոսա անդր՝ բարկութբ և
սրտմտութբ իմով, և ցասմամբ մե_
ծաւ ։ և դարձուցից զնս 'ի տեղիս յայս.
և նստուցից զնս յուսով ։ * Եւ եղի_ 38
ցին ինձ 'ի ժողովուրդ. և ես եղէց նց
յԱձ ։ * Եւ տաց նց սիրտ այլ. և ճա_ 39
նապարհ մի երկնչիլ յինէն զամ աւ_
ուրս 'ի բարութե իւրեանց. և որդւոց
իւրեանց յետ նց ։ * Եւ ուխտեցից նց 40
զուխտ յաւիտենական՝ զոր ոչ դար_
ձուցից յետս առնել նց բարի. և զեր_
կիւղ իմ տաց 'ի սիրտս նց. առ 'ի չա_
պստամբելոյ նոցա յինէն ։ * Եւ այց 41
արարից բարի առնել նց. և տնկե_
ցից զնս յերկրիս յայսմիկ հաւատովք
ամ սրտիւ իմով՝ և ամ անձամբ իմով ։
* Զի այսպէս ասէ Տր. որպ ածի 'ի վրյ 42
ժողովրդեանդ այդորիկ զամ չարիս մե
ծամեծս. նոյնպ ածից 'ի վրյ դոցա բա
րիս՝ զոր խօսեցայ 'ի վրյ դոցա ։ * Եւ 43
ստասցին միւսանգամ ագարակս յերկ
րիդ յայդմիկ՝ զորմէ դուք ասացէք թէ
անապատ է 'ի մարդոյ և յանասնոյ. և
մատնեցան 'ի ձեռս քաղդէացւոց ։
* Եւ ստասցին ագարակս արծաթոյն. 44
գրեսցես մուրհակս՝ և կնքեսցես. և կա
ցուսցես վկայս յերկրին բենիամենի՝ և
շուրջ զեհմաւ. և 'ի քաղաքս յուդայ. և
'ի քաղաքս լերինն. և 'ի քաղաքս սեփե
լեայ. և 'ի քաղաքս նագեբայ. զի դար
ձուցից զգերութիս նոցա՝ ասէ Տր ։

4 Թագ. 21.4.

Եզեկ. 11.20.

Եբր. Ը.

## ԳԼ ։ ԼԳ.

1 Եւ եղև բան Տն առ Երեմիա երկ
րորդ անգամ. և նա կայր տակաւ
ին կապեալ 'ի սրահի բանտին՝ և ասէ ։
2 * Այսպ ասէ Տր՝ որ արար զերկիր՝
և ստեղծ զդա. կանգնել զդա. Տէր
3 անուն է նր ։ * Կարդա առ իս. և տաց
քեզ պատասխանի. և պատմեցից քեզ
մեծամեծս և զօրաւորս՝ զոր ոչ գիտե
4 ցես ։ * Զի այսպէս ասէ Տր Աձ Իղի.
վասն տանց քաղաքիդ այդորիկ՝ և վր
ապարանից արքային յուդայ քակելոց.
'ի մահարձանս՝ և 'ի մարտկոցս ։
5 * Եկելոցն մարտնչիլ ընդ քաղդէա_
ցիսն. և լնուլ զնոսա դիակամբք մարդ
կան. զորս հարի բարկութբ իմով՝ և
սրտմտութբ՝ և դարձուցի զերեսս իմ
'ի նոցանէ վասն ամ չարութեց նոցա ։
6 * Ահաւասիկ ես ածից զպլան 'ի բժշ
կութի. բժշկեցից զնս. և յայտնեցից
նց զհնչիւն խաղաղութե. և զհաւատս ։
7 * Եւ դարձուցից զգերութիւն յուդայ՝
և զգերութիւն Եհմի. և շինեցից զնս
8 իբրև զառաջինն ։ * Եւ սրբեցից զնս
յամ անիրաւութեց նոցա՝ զոր անի_
րաւեցան յիս. և ոչ ևս յիշեցից զմեղս
նց՝ զորս մեղան առ իս՝ և ապստամբե
9 ցան յինէն ։ * Եւ եղիցին ինձ յուրա_
խութի և յօրհնութի՝ և 'ի մեծարանս
առաջի ամ ժողովրդոց երկրի. որք
լսիցեն զամ բարութիսն՝ զորս արա_
րից դոցա. և երկիցեն՝ և դառնասցին
'ի վրյ ամ բարութեցն. և 'ի վրյ ամ խա
ղաղութեց՝ զորս ես արարից դոցա ։
10 * Այսպէս ասէ Տր. դարձեալ լուիցի
'ի տեղւոջդ յայդմիկ՝ զորմէ դուք ասէք
թէ աւերակ է 'ի մարդոյ և յանասնոյ
'ի քաղաքս յուդայ՝ և արտաքոյ Եհմի.
յաւերակսն՝ առ 'ի չգոյէ մարդկան,
առ 'ի չգոյէ բնակչաց. և առ 'ի չգոյէ
11 անասնոյ ։ * Ձայն ուրախութե. և ձայն
ցնծութե ։ ձայն փեսայի, և ձայն հար
սին. որք ասիցեն, գոհացարուք զՏն
ամենակալ է. զի քաղցր է՝ զի յաւի_
տեան է ողորմ նորա ։ բերցեն պատա_
րագս օրհնութե 'ի տուն Տն. զի դար
ձուցից զգերութի երկրիդ այդորիկ՝
12 ըստ առաջնոյ՝ ասէ Տր ։ * Այսպ ասէ
Տր զօրութեց. դարձեալ եղիցի յաւե
րակ տեղւոջդ առ 'ի չգոյէ մարդոյ և
անասնոյ, և յամ քաղաքս դորա. վանք
հովուաց, և մակաղատեղք խաշանց ։
13 * 'Ի քաղաքս լեռնականս՝ և 'ի քաղաքս
սեփելեայ. և 'ի քաղաքս նագեբայ. և
յերկրին բենիամենի. և որ շուրջ զե_
րուսաղեմաւ. և 'ի քաղաքս յուդայ
դարձեալ անցանիցեն խաշինք ը ձեռն

Թուա_

թուողի՝ ասէ Տէր ։ * ‖ Ահա աւուրք 14 գան՝ ասէ Տր. և հաստատեցից զբանս իմ բարի. զոր խօսեցայ ՚ի վերայ տանն Իղի. և ՚ի վերայ տանն յուդայ ։ * Յաւ- 15 ուրս յայնոսիկ՝ և ՚ի ժամանակին յայն միկ ծագեցից դաւթի ծագումն արդա րութեան. որ առնիցէ զիրաւունս՝ և զար դարութիւն յերկրի ։ * ‖ Յաւուրս յայնո 16 սիկ փրկեսցի յուդա. և եհմ բնակես ցի յուսով ։ և այս է անուն՝ զոր կոչես- ցէ զնա, Տր արդարութիւն մեր ։ * Զի 17 այսպէս ասէ Տր. մի պակասեսցի դաւ- թի այր՝ որ նստիցէ յաթոռ տանն Իղի ։ * Եւ քահանայից ղևտացւոց մի պա- 18 կասեսցի այր յերեսաց իմոց՝ մատուցա նել ողջակէզս՝ և զոհել զոհս՝ և արկա նել խունկս զամ աւուրս ։ * Եւ եղև 19 բան Տն առ երեմիայ մարգարէ՝ և ասէ ։ * Այսպէս ասէ Տր՝ եթէ խափանիցէք 20 զուխտ իմ զտուընջեան՝ և զուխտ իմ զգիշերոյ. զի մի լինիցի տիւ և գիշեր ՚ի ժամանակի իւրում ։ * Ապա և ուխտն 21 իմ՝ որ ընդ դաւթի ծառայի իմոյ է՝ խափանեսցի չլինել նմա որդի՝ որ թա գաւորեսցէ յաթոռ նորա. և քահա- նայիցն ղևտացւոց պաշտօնէից իմոց ։ * Որօրինակ ոչ թուէին զօրութիւնք 22 երկնից. և ոչ չափի աւազ ծովու. նոյն պէս բազմացուցից զզաւակ դաւթի ծառայի իմոյ. և զղևտացիսն զպաշտօ նեայս իմ ։ * Եւ եղև բան Տն առ երե 23 միայ՝ և ասէ ։ * Ոչ տեսանես զինչ խօ 24 սի ժողովուրդդ՝ և ասեն. եթէ զազգս զերկուս՝ զորս ընտրեաց Տր՝ մերժեաց զնս. և զժողովուրդն իմ զայրացուցա նեն չլինել միւսանգամ յազգ առաջի նոցա ։ * Այսպէս ասէ Տր՝ եթէ զուխտ 25 իմ զտուընջեան և զգիշերոյ՝ և զերկնից և զերկրի հաստատութիւն ոչ կարգեցի ։ * Ապա և զզաւակն յակոբայ՝ և զդաւ 26 թի ծառայի իմոյ՝ անարգեցից չառ- նուլ ՚ի զաւակէ նորա իշխան ՚ի վերայ զաւակին աբրահամու՝ և իսահակայ՝ և յակոբու ։ զի դարձուցից զդարձ նց՝ և գթացայց ՚ի նոսա ։

‖ Եր. 23.5.
‖ Բ. Օրէ. 33.28.

## ԳԼ ։ ԼԴ ։

Բանն որ եղև առ երեմիայ ՚ի Տէ ։ 1 Եւ նաբուգոդոնոսոր արքայ բա- բելացւոց. և ամ զօր նորա. և ամ եր- կիր որ ընդ իշխանութբ ձեռին նր՝ և ամ ազգք, մարտնչէին ընդ եհմ. և ըն ամ քաղաքս յուդայ՝ և ասէ ։ * Այսպէս 2 ասէ Տր Ած Իղի. երթ առ սեդեկիայ արքայ յուդայ. և ասասցես զնա. այս- պէս ասէ Տր. մատնելով մատնեսցի քաղաքդ այդ ՚ի ձեռս արքային բաբե լացւոց. և առցէ զդա՝ և այրեսցէ զդա

յորժամ էր

3 հրով ։ * Եւ դու ոչ ապրեսցիս ՚ի ձե- ռաց նր. այլ ըմբռնելով ըմբռնես- ցիս, և ՚ի ձեռս նր մատնեսցիս ։ և աչք քո զաչս նորա տեսցեն. և բերան ՚ի բերան խօսեսցիս ընդ նմա. և ՚ի բա- 4 բելոն երթիցես ։ * Այլ լուր զպատ- գամ Տն՝ սեդեկիա արքայ յուդայ. այս պէս ասէ Տր վն քո. ոչ մեռցիս սրով ։ 5 * Այլ խաղաղութբ մեռանիցիս. և որպէս լացին զհարսն քո զթագաւորսն առաջինս՝ որք եղեն յառաջ քան զքեզ. նոյնպէս լացցեն և զքեզ. թէ վայ վայ տէր. և կոծեսցեն զքեզ. զի մեծամեծս 6 խօսեցայ ես՝ ասէ Տր ։ * Եւ խօսեցաւ երեմիա մարգարէ առ սեդեկիայ ար- քայ յուդայի, զամ զբանս զայսոսիկ 7 յեհմ ։ * Եւ զօր թագաւորին բաբե- լացւոց մարտնչէր ընդ եհմ՝ և ընդ ամ քաղաքս յուդայ ընդ մնացեալսն. ընդ ղաքիսայ՝ և ընդ ազեկայ. զի նք մնացեալք էին ՚ի քաղաքացն յուդայ 8 քաղաքք ամուրք ։ * Բանն որ եղև առ երեմիայ ՚ի Տէ. յետ կատարելոյ սեդե կիայ արքայի զուխտն ընդ ամ ժողո- վրդեանն՝ որ յեհմ. կոչել նոցա զթո- 9 ղութիւն ։ * Արձակել իւրաքանչիւրու- մեք զծառայս իւր. և իւրաքանչիւր զա ղախին. զայր եբրայեցի. և զկին եբ- րայեցի ազատս. և մի ծառայել առն 10 յազգէ յուդայ՝ եղբօր իւրում ։ * Եւ դարձան մեծամեծքն՝ և ամ ժողո- վուրդն, որք մտեալ էին յուխտ՝ արձա- կել իւրաքանչիւր զծառայ իւր. և իւր- աքանչիւր զաղախին իւր. զայր եբ- րայեցի. և զկին եբրայեցի ազատս. և ոչև ս ծառայել նց. լուան, և արձակե 11 ցին ։ * Եւ յետոյ դարձան. և դարձու- ցին անդրէն զծառայս՝ և զաղախնայս. զորս արձակեցին ազատս. և կալան 12 զնս ՚ի ծառայս և յաղախնայս ։ * Եւ եղև բան Տն առ երեմիայ ՚ի Տէ՝ և 13 ասէ ։ * Այսպէս ասէ Տր Ած Իղի. ես եդի զուխտ ընդ հարսն ձեր՝ յաւուր յորում փրկեցի զնոսա յերկրէն եգիպ տացւոց ՚ի տանէ ծառայութե. և ասեմ ։ 14 * ‖ Յետ յորժամ եօթն ամ լցցի. արձա կեսցես զեղբայրն քո զեբրայեցի՝ որ վաճառեցի քեզ՝ և գործեսցէ քեզ զվեց ամ. և արձակեսցես զնա ազատ ՚ի քէն. և ոչ լուան ինձ հարքն ձեր. և ոչ խո- 15 նարհեցուցին զունկն իւրեանց ։ * Եւ դարձան այսօր առնել հաճոյս առաջի աչաց իմոց. կոչել զթողութիւն իւրա- քանչիւր ընկերի իւրում. և կատարե- ցին զուխտն առաջի իմ. ՚ի տանն յորոյ 16 վերայ կոչեցաւ անուն իմ ։ * Եւ շրջե ցայք՝ և պղծեցէք զանուն իմ դառ- նալ իւրաքանչիւր ՚ի ծառայ իւր, և

‖ Ելից 21.2. Բ. Օրէ. 15.12.

իւրա-

իւրաքանչիւր յաղախին իւր. զորս ար-
ձակեցիք ազատս հոգւոց ձերոց. և դար-
ձուցիք զնոսա լինել ձեզ 'ի ծառայս՝
և յաղախնայս։ *Վս այդորիկ այսպէս 17
ասէ Տր. դուք ոչ լուայք ինձ կոչել
արձակուրդ իւրաքանչիւր եղբօր իւր-
ում. և իւրաքանչիւր մերձաւորի իւր-
ում. ահաւասիկ ես կոչեցից ձեզ ար-
ձակուրդ՝ ասէ Տր. 'ի սուր՝ և 'ի սով՝
և 'ի մահ. *Եւ տաց զձեզ 'ի ցրումն ընդ 18
ամ թագաւորութիւնս երկրի։ և տաց
զարսդ՝ որք անցին զուխտիւ իմով. և
ոչ կացին 'ի բանս ուխտի իմոյ՝ զոր ա-
րարին առաջի իմ. զորթն՝ զոր կտրե-
ցին, և անցին ընդ մէջ յօշոտածոց նր.
*Զիշխանսն Յուդայ՝ և զներքինիս. և 19
զքահանայս. և զամենայն ժողովուրդ
երկրին՝ որք անցին ընդ մէջ յօշոտածոյ
որթուն։ *Տաց զնոսա 'ի ձեռս թշնա- 20
մեաց իւրեանց. և 'ի ձեռս խնդրողաց
անձանց նց. և արկից զդիակունս նոցա
կերակուր թռչնոց երկնից՝ և գազա-
նաց երկրի։ *Եւ զսեդեկիայ արքայ 21
Հրէաստանի՝ և զիշխանս նորա տաց 'ի
ձեռս թշնամեաց իւրեանց՝ և 'ի ձեռս
խնդրողաց անձանց նոցա. և 'ի ձեռս
զօրու արքային բաբելացւոց. որք ե-
կեալ հասեալ են 'ի վր նոցա։ *Ահա 22
ւասիկ ես հրաման տամ՝ ասէ Տր. և
դարձուցից զնս անդրէն 'ի քաղաքդ.
մարտիցեն ընդ դմա՝ և առցեն զդա՝ և
այրեսցեն զդա հրով. և զքաղաքսն յու-
դայ տաց յանապատ 'ի բնակչաց իւրց։

որք յետս դարձան 'ի նոցանէ

## ԳԼ: ԼԵ.

Բանն որ եղև առ Երեմիայ 'ի Տէ 1
յաւուրս յովակիմայ որդւոյ յօ-
սեայ արքայի յուդայ՝ և ասէ։ *Երթ 2
'ի տունն ռեքաբիմայ՝ և կոչեա զնս՝ և
ածցես 'ի տունն Տն 'ի մի 'ի սրահից ան-
տի. և արբուսցես նց գինի։ *Եւ ածի 3
զյեքոնիայ զորդի երեմիայի որդւոյ քա-
բասինայ՝ և զեղբարս նր՝ և զամ որդիս
նր. և զամ տունն ռեքաբիմայ։ *Ածի 4
'ի տունն Տն. 'ի դահլիճս որդւոցն անա-
նայ որդւոյ գոդողեայ առն Այ՝ որ էր
մերձ 'ի տունն իշխանացն. 'ի վերայ ապա-
րանիցն մաասիայ՝ որդւոյ սելովմայ
վտառապահի։ *Եւ եդի առաջի որդ- 5
ւոցն ռեքաբիմայ ամանս մի լի գինւով՝
և բաժակս։ և ասեմ ցնս. արբէք զգի-
նի այտի։ *Եւ ասեն՝ ոչ արբցուք զգի- 6
նի. զի յովնադաբ որդի ռեքաբայ հայր
մեր պատուիրեաց մեզ՝ և ասէ. մի ըմ-
պիցէք զգինի դուք՝ և որդիք ձեր մին-
չև ցյաւիտեան։ *Եւ մի շինիցէք 7
տունս. և մի սերմանիցէք սերմանիս.
և մի տնկիցէք այգիս։ այլ 'ի վրանս

պատշգամ ճաղապատէ

բնակեսջիք զամ աւուրս ձեր. զի կեց-
ցէք աւուրս բազումս՝ յերկրիդ յորում
8 շրջիցիք դուք 'ի դմա։ *Եւ լուաք յով-
նադաբայ որդւոյ ռեքաբայ հօր մե-
րում՝ ըստ ամի՝ զոր պատուիրեաց մեզ
չըմպել զգինի զամ աւուրս մեր՝ մեք՝
և կանայք մեր՝ և ուստերք՝ և դստերք
9 մեր։ *Եւ ոչ շինել տունս՝ և ոչ բնա-
կել 'ի նոսա. այլ և այգիք՝ և անդք՝ և
10 սերմանիք ոչ եղեն մեր։ *Եւ բնակե-
ցաք վրանօք. և լուաք՝ և արարաք ըստ
ամի՝ զոր պատուիրեաց մեզ յովնադաբ
11 հայր մեր։ *Եւ եղև իբրև ել նաբու-
գոդոնոսոր արքայ բաբելացւոց յեր-
կիրս յայս՝ ասացաք. եկայք՝ և մտցուք
յեմ, յերեսաց զօրուն քաղդէացւոց.
և յերեսաց զօրուն ասորեստանեայց.
12 և բնակեցաք անդ։ *Եւ եղև բան
13 Տն առ իս՝ և ասէ։ *Այսպէս ասէ Տր
զօրութեանց Ած Իղի. երթ՝ և ասա ցայր
յուդայ՝ և ցբնակիչս եմի. ոչ առնու-
ցուք խրատ լսել բանից իմոց՝ ասէ Տր։
14 *Կացին 'ի բանի որդիքն յովնադաբայ
որդւոյ ռեքաբայ. զոր պատուիրեաց
որդւոց իւրոց չըմպել զգինի. և ոչ ար-
բին մինչև ցայսօր. զի լուան պատուի-
րանի հօրն իւրեանց. և ես խօսեցայ
ընդ ձեզ կանխաւ. և ոչ լուայք ինձ։
15 *Եւ առաքեցի առ ձեզ զամ զծա-
ռայս իմ զմարգարէս կանխեալ՝ և ա-
ռաքեալ. ‖ բամ դարձարուք իւրաքանչ-
իւր 'ի ճանապարհէ իւրմէ չարէ. և
լաւագոյնս արարէք զիրս ձեր. և
մի երթայք զհետ աստուածոց օտարաց
ծառայել նց. և բնակեցէք յերկրիդ՝
զոր ետու ձեզ՝ և հարց ձերոց. և խոնար
հեցուցէք զունկն ձեր. և ոչ լուայք
16 ինձ։ *Եւ կացուցին որդիքն յովնադա-
բայ որդւոյ ռեքաբայ զպատուէր հօրն
իւրեանց՝ զոր պատուիրեաց նոցա. և
ժողովուրդդ այդ ոչ լուաւ ինձ։
17 *Վսն այդորիկ այսպէս ասէ Տր զօ-
րութեանց Ած Իղի. ահաւադիկ ես ա-
ծից 'ի վերայ յուդայ՝ և 'ի վերայ ամ
բնակչաց եմի զամենայն չարիս՝ զոր
խօսեցայ 'ի վերայ նոցա. փոխանակ զի
խօսեցայ առ նոսա՝ և ոչ լուան. և կոչե-
ցի զնոսա՝ և ոչ ետուն ինձ պատասխա-
18 նի։ *Եւ առ տունն ռեքաբայ ասաց
երեմիա. վասն այդորիկ այսպէս ասէ
Տր զօրութեանց Ած Իղի. փոխանակ զի
լուան որդիքն յովնադաբայ որդւոյ
ռեքաբայ պատուիրանի հօրն իւրեանց
և պահեցին զամ հրամանս նր. առնել
ըստ ամի՝ զոր պատուիրեաց նց հայրն
19 իւրեանց։ *Վն այնորիկ այսպէս ասէ
Տր զօրութեանց Ած Իղի. մի պակասես-
ցի այր յորդւոցն յովնադաբայ որդւոյ
ռե-

բնակեցարուք

‖ Մէր. 18. 11. և 25. 5. Յովն. 3. 8.

բնակեցարուք

ւեքարայ յանդիմանակաց առաջի իմ զամենայն աւուրս երկրիդ ։

## Գլ ։ ԼԶ ։

1 Եւ յամին չորրորդի յովակիմայ որդւոյ յովսեայ արքայի յուդայ՝ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ ։ 2 *Առ դու քեզ քարտէս մատենի՝ եւ գրեա՛ 'ի նմա զամ բանս՝ զոր հրաման ետու քեզ 'ի վերայ իլի. եւ 'ի վե՛ր յուդայ. եւ 'ի վերայ ամ ազգաց՝ յօրէ յորմէ խօսեցայ ես ընդ քեզ՝ յաւուրցն յովսիայ արքայի յուդայ մինչեւ ցայսօր ։ 3 *Թերեւս լուիցեն տունն յուդայ զամ չարիս. զոր խորհեալ եմ ես առնել նոցա. զի դարձցին իւրաքանչիւր 'ի ճանապարհէ իւրմէ չարէ. եւ քաւիչ եղէց անիրաւութեց եւ մեղաց նոցա ։ 4 *Եւ կոչեաց երեմիա զբարուք որդի ներեայ. եւ գրեաց բարուք 'ի բերանոյ երեմիայի զամ զբանս Տն՝ զոր հրաման ետ նմա 'ի քարտիսի մատենին ։ 5 *Եւ պատուիրեաց երեմիաս բարուքայ՝ եւ ասէ. ես 'ի կալանս եմ. եւ ոչ կարեմ մտանել 'ի տուն Տն ։ 6 *Եւ դու մտցես, եւ ընթերցցիս 'ի մատենիդ՝ զոր գրեցեր 'ի բերանոյ իմոյ զբանս Տն յականջս ժողովրդեանն 'ի տան Տն յաւուրս պահոց. եւ յականջս ամ յուդայ՝ որք մտանեն 'ի քաղաքաց իւրեանց՝ ընթերցցիս ։ 7 *Թերեւս անկցի գութ 'ի սիրտ նոցա առաջի Տն. եւ դարձցին իւրաքանչիւր 'ի ճանապարհաց իւրեանց չարաց. զի մեծ է սրտմտութիւն եւ բարկութիւն Տն զոր խօսեցաւ Տր 'ի վերայ ժողովրդեանդ այդորիկ ։ 8 *Եւ արար բարուք որդի ներեայ ըստ ամի՝ զոր պատուիրեաց նմա երեմիա մարգարէ. ընթեռնլով 'ի մատենէն զպատգամս Տն 'ի տան Տն ։

9 *Եւ եղեւ յամին հինգերորդի յովակիմայ որդւոյ յովսեայ արքայի յուդայ՝ յամսեանն իններորդի ժողովեցաւ 'ի պահս առաջի Տն ամ ժողովուրդն յէմ. եւ ամ ժողովուրդն՝ որք գային 'ի քաղաքացն յուդայ յերուսաղէմ. եւ տունն յուդայ ։ 10 *Եւ ընթերցաւ բարուք 'ի մատենէն զբանս երեմիայի 'ի տան Տն. 'ի սրահին գամարեայ որդւոյ սափանայ դպրապետի՝ 'ի միւսում նորոյ դրանն տան Տն՝ յականջս ամ ժողովրդեանն ։ 11 *Եւ իբրեւ լուաւ միքեա որդի գամարայ որդւոյ սափանեայ զամենայն զպատգամս Տեառն 'ի մատենէ անտի ։ 12 *Էջ 'ի տուն թագաւորին 'ի դիւան դպրապետին. եւ անդ նստէին ամ իշխանքն. եղիսամ դպրապետ. եւ դաղեա որդի սամեի՝ եւ նաթան որդի աքոբորայ. եւ գամարիա որդի սափանայ. եւ սեդեկիա որդի անանիայ եւ ամ իշխանքն ։ 13 *Պատմեաց նց միքէ զամ բանս՝ զոր լուաւ յընթեռնուլ բարուքայ 'ի մատենէ անտի յականջս ժողովրդեանն ։ 14 *Եւ առաքեցին ամ իշխանքն առ բարուք զյուդի որդի նաթանայ՝ որդւոյ սելեմիայ՝ որդւոյ քուսայ՝ եւ ասեն. զմատեանն՝ զոր ընթեռնուիր յականջս ժողովրդեանն. առ 'ի ձեռս քո՝ եւ եկ այսր. եւ էառ բարուք որդի ներեայ զմատեանն 'ի ձեռս իւր՝ եւ էջ առ նոսա ։ 15 *Եւ ասեն ցնա. ա՛ղէ՝ դարձեալ ընթերցիր յականջս մեր. եւ ընթերցաւ բարուք յականջս նոցա ։ 16 *Եւ եղեւ իբրեւ լուան զամ զպատգամսն. խորհեցան իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում. եւ ասեն ցբարուք. պատմելով պատմեսցուք արքայի զամենայն զբանսդ զայդոսիկ ։ 17 *Հարցին ցբարուք՝ եւ ասեն. ա՛ղէ՝ պատմեա՛ մեզ՝ ուստի՛ գրեցեր զամ զբանսդ զայդոսիկ՝ յո՞յր բերանոյ ։ 18 *Եւ ասէ ցնոսա բարուք. 'ի բերանոյ երեմիայի. նա պատմեաց ինձ զամ զբանս զայսոսիկ. եւ ես գրեցի 'ի մատենիս սեւակաւ ։ 19 *Եւ ասեն իշխանքն ցբարուք. երթ՝ թաքիր դու՝ եւ երեմիա. եւ ոք մի՛ գիտասցէ, թէ ուր իցէք ։ 20 *Եւ մտին առ արքայ 'ի սրահ անդր. եւ զմատեանն ետուն պահել 'ի տան եղիսամայ դպրապետի. եւ պատմեցին արքայի զամենայն զբանսն ։ 21 *Եւ առաքեաց արքայն զյուդի առնուլ զմատեանն. եւ էառ զայն 'ի տանէ եղիսամայ դպրապետի. եւ ընթերցաւ յուդի յականջս թագաւորին՝ եւ յականջս ամ իշխանացն՝ որք կային շուրջ զթագաւորաւն ։ 22 *Եւ թագաւորն նստէր 'ի ձմերատանն յամսեանն իններորդի. եւ կրակարան հրոյ առաջի նորա ։

23 *Եւ եղեւ իբրեւ ընթերցաւ յուդի երիս կամ չորս էջս. կտրեաց զայն զմելինաւ դպրապետին. եւ ընկէց 'ի կրակն՝ որ կայր 'ի վե՛ր կրակարանին մինչեւ սպառեցաւ ամ քարտէսն 'ի հուր կրակարանին ։ 24 *Եւ ոչ խնդրեցին. եւ ոչ պատառեցին զպատմուճանս իւրեանց թագաւորն՝ եւ ամ ծառայքն իւր՝ որք լուան զամենայն զբանսն զայնոսիկ ։

25 *Եւ եղնաթան. եւ դաղիա. եւ գամարիա եդին 'ի մտի արքային՝ չայրել զքարտէսն. եւ ոչ անսաց նոցա ։ 26 *Եւ հրաման ետ արքայ երեմիելի որդւոյ արքայի. եւ սարեայ որդւոյ եսրիելի. եւ սելեմիայ որդւոյ աբդիելի. ունել զբարուք դպրապետ՝ եւ զերեմիայ մարգարէ. եւ նոքա չոգան՝ թաքեան ։ 27 *Եւ եղեւ բան Տն առ երեմիայ յետ այրելոյ թա-

թագաւորին զքարտէսն ․ և զամենայն
բանս՝ զորս գրեաց բարուք 'ի բերանոյ
28 երեմիայի ։ * Եւ ասէ դարձեալ ․ առ
դու այլ քարտէս՝ և գրեա՛ 'ի նմա զամ
բանսն զառաջինսն ․ որք էին յառաջ_
նում քարտիսին ․ զոր այրեաց յովա_
29 կիմ արքայ յուդայ ։ * Եւ ցյովակիմ
արքայ յուդայ ասասցես ․ այսպ ասէ
Տր ․ դու այրեցեր զմատեանն զայն՝ և
ասացեր՝ թէ ընդէր գրեցեր 'ի նմա՝ և
ասացեր ․ մտանելով մտցէ արքայն բա
բիլացւոց ․ և ջնջեսցէ զերկիրդ զայդ ․
և պակաս արասցէ 'ի դմանէ զմարդ և
30 զանասուն ։ * Վասն այսորիկ այսպէս
ասէ Տր 'ի վերայ՝ յովակիմայ արքայի
յուդայ ․ մի՛ մնասցէ նր՝ որ նստցի յա_
թոռն դաւթի ․ և դիակունք նորա
եղիցին անկեալ 'ի տուէ 'ի տօթի ․ և
31 'ի գիշերի 'ի ցրտոյ ։ * Եւ այց արարից
'ի վր նորա ․ և 'ի վերայ ազգի նորա ․
և 'ի վր ծառայից նորա ․ ըստ անօրէ_
նութեանց նր ․ և ածից 'ի վր նոցա՝ և 'ի
վր բնակչաց երէմի և 'ի վերայ երկրիդ
յուդայ զամ չարիս՝ զոր խօսեցայ 'ի վր
32 դոցա, և ոչ լուան ։ * Եւ էառ երեմիա
այլ քարտէս՝ և ետ ցբարուք որդի նե
րեայ դպրապետն ․ և գրեաց 'ի նմա 'ի
բերանոյ երեմիայի զամ բանս մատե
նին ․ զոր այրեաց յովակիմ արքայ յու
դայ 'ի կրակի ․ և այլևս բանք յաւե_
լան 'ի նոյն աւելի քան զայնս ։

## ԳԼ ։ ԼԷ ։

4 Թագ. 24. 17. 2 Մն. 36. 10.

1 Եւ թագաւորեաց սեդեկիա որ_
դի յովսիայ փոխանակ յեքոնիայ
որդւոյ յովակիմայ ․ զոր թագաւորե_
ցոյց նաբուգոդոնոսոր արքայ բաբի_
լացւոց՝ թագաւորել 'ի վր յուդայ ։
2 * Եւ ոչ լուաւ նա՝ և ծառայք իւր ․
և ժողովուրդ երկրին զբանս Տն՝ զոր
խօսեցաւ 'ի ձեռն երեմիայի մարգա_
3 րէի ։ * Եւ առաքեաց արքայ սեդեկիա
զյովաքազ զորդի սելեմիայ ․ և զսօփո
նիայ որդի մաասայ զքահանայս առ
երեմիայ մարգարէ՝ և ասէ՝ կա՛ց դու
յաղօթս 'ի վր մեր առ Տր ԱԾ մեր ։
4 * Եւ երեմիա էանց ընդ մէջ ամբո_
խին՝ և եկն ․ և ոչ արկին զնա 'ի բանտ ։
և զօր փարաւոնի ել յերկրէն եգիպ_
տացւոց ․ և լուան քաղդէացիքն՝ որոց
պաշարեալ էր զեէմ, զլուր նց՝ և ելին
5 յեէմէ ։ * Եւ եղև բան Տն առ երե_
6 միայ մարգարէ՝ և ասէ ։ * Այսպէս
ասէ Տր ԱԾ իէլի ․ այսպէս ասասջիք
ցարքայն յուդայ՝ որ առաքեաց զձեզ
առ իս խնդրել զիս ․ ահա զօրն փա_
րաւոնի ել ձեզ յօգնականութի՝ դարձ_
7 ցի անդրէն յեգիպտոս ։ * Եւ քաղդէա

ցիքն դարձցին այսրէն և մարտիցեն ըդ
քաղաքիս ընդ այսմիկ ․ և առցեն զսա ․
8 և այրեսցեն զսա հրով ։ * Այսպ ասէ
Տր ․ մի՛ կարծէք յանձինս ձեր՝ եթէ ե_
լին՝ գնացին քաղդէացիքն 'ի մէնջ՝ չեն
9 թափելոց 'ի ձէնջ ։ * Եթէպէտ և զամ
զօրն քաղդէացւոց՝ որք մարտնչէին ըդ
ձեզ, կոտորիցէք ․ խոցեալքն՝ որք մնա
ցեն 'ի նոցանէ՝ յիւրաքանչիւր տեղւո_
ջէ յարիցեն՝ և այրեսցեն հրով զքա_
10 ղաքդ ։ * Եւ եղև իբրև մերձեցաւ զօր
քաղդէացւոցն յեէմէ, յերեսաց զօ_
11 րացն փարաւոնի ։ * Ել երեմիա յեէմէ
երթալ յերկիրն բենիամինի ․ գնել
անդ բաժին 'ի մէջ ժողովրդեանն ։
12 * Եւ եկն՝ էհաս 'ի դուռն բենիամինի՝
և անդ էր այր մի՝ առ որ մնեալ էր նր ․
անուն սարու որդի սելեմեայ ․ որդւոյ
անանիայ ․ կալաւ զերեմիայ մարգարէ՝
և ասէ ․ առ քաղդէացիսն փախուցեալ
13 երթաս ։ * Եւ ասէ երեմիա ․ սուտ
ասես ․ չերթամ փախստական առ քաղ
դէացիսն ․ և ոչ անսաց նմա ․ և կալաւ
սարու զերեմիայ ․ և էած առ իշխանսն ։
14 * Եւ զայրացան իշխանքն 'ի վերայ ե_
րեմիայի, գան հարին, և եդուն զնա 'ի
տուն բանտի յապարանս յօնաթանու
դպրապետի ․ քանզի զնորա ապարանսն
15 արարին բանտ ։ * Եկն երեմիա 'ի տուն
գբոյն յայերինօթն ․ և նստաւ անդ
16 երեմիա զաւուրս բազումս ։ * Առա_
քեաց արքայ սեդեկիա՝ և կոչեաց զնա ․
և էհարց զնա թագաւորն 'ի տան իւր
ում 'ի ծածուկ՝ և ասէ ցնա ․ եթէ իցէ
ինչ պատգամ 'ի Տէ ։ ասէ երեմիա՝ այո՛
է ։ և ասէ ․ 'ի ձեռս թագաւորին բաբի
17 լացւոց մատնեսցիս ։ * Եւ ասէ երե_
միա ցթագաւորն սեդեկիա ․ զի՞նչ մե_
ղայ քեզ՝ և ծառայից քոց՝ և ժողովր_
դեանն ․ զի տաս դու զիս 'ի տուն բան
18 տին ։ * Եւ ո՞ւր են մարգարէքն ձեր՝
որք մարգարէանային՝ և ասէին՝ թէ
ոչ է գալոց արքայն բաբիլացւոց 'ի վր
19 ձեր յերկիրս յայս ։ * Եւ արդ՝ լո՛ւր՝
աղաչեմ Տր իմ արքայ ․ անկցի ողորմ
իմ առաջի քո ․ և ընդէ՞ր դարձուցա_
նես զիս 'ի տուն յօնաթանայ դպրապե
20 տի ․ և անդ մեռանիցիմ ։ * Հրամա՛ն
ետ արքայ սեդեկիա ․ և արկին զնա 'ի
տուն բանտին ․ և տային նմա աւուր
նկանակ մի հաց 'ի հացարարացն ․ մին
չև հատաւ ամենևին հաց 'ի քաղաքէն ․
և նստաւ երեմիա 'ի սրահի բանտին ։

## ԳԼ ։ ԼԸ ։

1 Եւ լուաւ սափատիա որդի մատ_
թանայ՝ և գոդողիա որդի պաս_
քովրայ ․ և յովաքազ որդի սելեմիայ ․

և պատգոր որդի մելքեայ, զբանս երե
միայի՝ զոր խօսէր առ ամենայն ժողո-
Վեր. 21.9. վուրդն՝ և ասէր։ * Այսպէս ասէ Տր̃. 2
որ նստի 'ի քաղաքիս յայսմիկ՝ մեռցի
սրով՝ և սովու՝ և մահուամբ. և որ ելա
նէ առ քաղդէացիսն՝ կեցցէ. և եղիցի
նմա անձն իւր 'ի գիւտս՝ և կեցցէ։
* Զի այսպէս ասէ Տէր. մատնելով 3
մատնեսցի քաղաքդ 'ի ձեռս զօրու թա
գաւորին բաբելացւոց՝ և առցէ զդա։
* Եւ ասեն իշխանքն ցթագաւորն. 4
սպանցի այրն այն. զի այնու լուծանէ
նա զձեռս արանց պատերազմողաց՝
մնացորդաց քաղաքիս այսորիկ. և ըզ
ձեռս ամ̃ ժողովրդեանդ. խօսել ընդ
նոսա ըստ բանիցդ այդոցիկ. զի այրն
և ոչ խօս ղաղութե այն ոչ օգտի, և խաղաղութե բանս
խօսի ընդ ժողովրդեանն. այլ չարիս։
* Եւ ասէ արքայ սեդեկիա. ահաւա- 5
նիկ կայ 'ի ձեռս ձեր. քանզի ոչինչ
էր ձեռնհաս առ նոսա՝ և ոչ իւիք։
* Եւ առին զերեմիայ. և ընկեցին զնա 6
'ի գուբն մելքեայ որդւոյ թագաւո-
րին. որ է 'ի սրահի բանտին. և իջու-
ցին զերեմիայ պարանօք 'ի գուբն. և
'ի գբի անդ ջուր ոչ էր. այլ լոկ տիղմ.
և կայր երեմիա 'ի տղմին։ * Եւ լուաւ 7
աբդեմելէք եթէովպացի՝ այր ներքինի՝
(և էր ինքն յապարանս թագաւորին)
թէ արկին զերեմիայ 'ի գուբն. և ար
քայ նստէր առ դրան բենիամինի։
* Եւ ել առ նա աբդեմելէք յապարա 8
նից թագաւորին. և խօսեցաւ ը̃ թա-
գաւորին՝ և ասէ։ * Տր̃ արքայ՝ չարիս 9
գործեցին արքն այնոքիկ ըստ ամենայ
նի՝ զոր արարին երեմիայի մարգարէի.
զի արկին զնա 'ի գուբ՝ և մեռանի 'ի
ներքս. չարիս գործեցեր սպանանել
զայրն յերեսաց սովու այսորիկ. զի
ոչ գտանի հաց 'ի քաղաքիս։ * Եւ հրա 10
մայեաց թագաւորն աբդեմելէքայ
եթէովպացւոյ՝ և ասէ. առ դու ը̃ քեզ
աստի արս երեսուն. և հանէք զմար-
գարէն 'ի գբոյ անտի՝ զի մի մեռցի։
* Եւ էառ աբդեմելէք զարսն ընդ 11
իւր՝ և եկն յապարանս թագաւորին
'ի գետնափոր տուն գանձին. և էառ
անտի կապերտս հինս. և ընկէց զայնս
առ երեմիայ 'ի գուբն։ * Եւ ասէ աբ- 12
դեմելէք եթէովպացի ցերեմիայ. դիր
զհին կապերտդ և զլուրդդ ընդ ան-
թօք ձեռացքոց 'ի ներքոյ պարանացդ.
և արար երեմիա այնպէս։ * Եւ ձգե- 13
ցին զնա պարանօքն. և հանին 'ի գբոյ
անտի. և նստաւ երեմիա 'ի սրահի բան
տին։ * Եւ առաքեաց արքայ սեդեկիա՝ 14
'ի դուռն երրորդ և կոչեաց առ ինքն զմարգարէն 'ի
տուն աստղիմայն. որ էր 'ի տան Տն̃։

և ասէ արքայն. հարցանեմ ինչ ցքեզ
բան. մի իցէ՝ թէ թաքուցանիցես ըզ
15 բանն զայն յինէն։ * Եւ ասէ երեմիա
ցթագաւորն. եթէ պատմեցից քեզ՝
ոչ ապաքէն մահու սպանանիցես զիս.
և եթէ տաց ինչ քեզ խրատ՝ ոչ անսայ
16 ցես ինձ։ * Եւ երդուաւ նմա արքայն
սեդեկիա գաղտ. և ասէ՝ կենդանի է
Տր̃՝ որ արար 'ի մեզ զշնորհս զայս. թէ
իցէ՝ սպանից զքեզ՝ և կամ թէ իցէ
մատնեցից 'ի ձեռս արանցն՝ որք խնդ-
17 րեն զանձն քո։ * Եւ ասէ ցնա երե
միա. այսպէս ասէ Տր̃ զօրութեց՝ Այ̃ծ
իէլի, եթէ ելանելով ելցես առ զօ-
րավար արքային բաբելացւոց՝ կեցցէ
անձն քո՝ և քաղաքս ոչ այրեսցի հրով.
18 և կեցցես դու՝ և տուն քո։ * Ապա թէ
ոչ ելցես առ իշխան արքային բաբե-
լացւոց. մատնեսցի քաղաքս 'ի ձեռս
քաղդէացւոց՝ և այրեսցեն զսա հրով.
և դու ոչ ապրեսցիս 'ի ձեռաց նոցա։
19 * Եւ ասէ սեդեկիա արքայ ցերեմիայ.
իմ բանք ինչ են առ հրէայսն փախ-
տականս առ քաղդէացիսն՝ գուցէ
տայցեն զիս 'ի ձեռս նոցա՝ և ձաղիցեն
20 զիս։ * Եւ ասէ երեմիա, ոչ մատնես-
ցեն զքեզ. բայց լուր զբանն Տն̃՝ զոր ես
խօսիմ ընդ քեզ. և լաւ լիցի քեզ՝ և
21 կեցցէ անձն քո։ * Ապա թէ ոչ կամի
ցիս ելանել՝ այս բանն է՝ զոր եցոյց ինձ
22 Տր̃։ * Ահաւադիկ ամ̃ կանայք՝ որք
մնացեալք են 'ի տան թագաւորին յու
դայ. հանցին առ իշխանս արքային բա
բելացւոց. և նոքա ասիցեն, խաբեցին
զքեզ՝ և յաղթեցին քեզ արք խաղաղա
րարք՝ և արկցեն 'ի գայթագղութիւն
23 զոտս քո՝ և դարձցին 'ի քէն։ * Եւ զամ̃
կանայս քո՝ և զորդիս քո հանցեն առ
քաղդէացիսն. և դու ոչ ապրեսցիս 'ի
ձեռաց նց̃. զի 'ի ձեռս թագաւորին
բաբելացւոց ըմբռնեսցիս. և քաղաքս
24 այրեսցի հրով։ * Եւ ասէ ցնա թա-
գաւորն. այր դու՝ մի ոք իմասցի ինչ
'ի բանիցդ յայդցանէ, գուցէ մեռա-
25 նիցիս։ * Եւ եթէ լուիցեն իշխանքն՝
եթէ խօսեցայ ընդ քեզ՝ և գայցեն առ
քեզ. և ասիցեն. պատմեա մեզ՝ զինչ
խօսեցար ընդ արքայի. մի թաքուցա-
ներ 'ի մէնջ՝ և ոչ սպանցուք զքեզ. և
կամ թէ զինչ խօսեցաւ ընդ քեզ ար-
26 քայ։ * Ասասցես ցնոսա, արկի զգութ
առաջի արքայի՝ զի մի դարձուսցէ զիս
անդրէն 'ի տուն յովնաթանայ մեռա-
27 նել ինձ անդ։ * Եւ եկին ամ̃ իշխանքն
առ երեմիայ՝ և հարցին ցնա. և պատ
մեաց նոցա զամ̃ զբանսն. զոր պատ-
ուիրեաց նմա թագաւորն. և լռեցին
28 'ի նմանէ. զի ոչ ել 'ի վեր բանն։ * Եւ
նստաւ

նստաւ երեմիա 'ի սրահի բանտին՝ մին
չև 'ի ժամանակն յորում առաւ եղմ.
և եղև յորժամ առաւ երուսաղէմ։

## ԳԼ ։ ԼԹ ։

4 Թագ. 25.1. Երեմ. 52.4.

1 Յամին Թ իններորդի սեդեկիայ ար
քայի յուդայ՝ յամսեանն տասներ
որդի. եկն էհաս նաբուգոդոնոսոր
արքայ բաբելացւոց՝ ինքն և ամ զօրք
իւր յեմ. և պաշարեցին զնա ։ 2 *Եւ
յամին մետասաներորդի սեդեկիայ՝
յամսեանն չորրորդի՝ որ օր իննն էր ամ
սոյն. պատառեցաւ քաղաքն ։ 3 *Եւ
մտին ամ զօրավարք արքային բաբե
լացւոց. և նստան 'ի դրանն միջնում.
ներգեղ՝ սարասար. սամագաթ՝ նա
բու. սարսեքիմ. ռափսարիմ. և ներգեղ
սարասար. ռաբմագ. և ամ այլ ևս իշ
խանք արքային բաբելացւոց ։ 4 *Եւ
եղև՝ իբրև ետես զնս սեդեկիա արքայ
յուդայ. և ամ արք պատերազմողք
փախեան. և ելին գիշերի 'ի քաղաքէ
անտի ընդ ճանապարհ բուրաստա
նին արքունի. ընդ դուռն՝ որ էր 'ի մէջ
պարսպացն ։ և ելին ընդ ճանապարհն
արաբեայ ։ 5 *Եւ զհետ եղեն նց զօրքն
քաղդէացւոց ։ և հասին սեդեկիայ յա
րաբօթ երիքովայ. կալան զնա՝ և ա
ծին առ նաբուգոդոնոսոր արքայ բա
բելացւոց 'ի դեբղաթայ՝ յերկիրն եմա
թայ ։ և խօսեցաւ ը նմա դատաստա
նօք ։ 6 *Եւ սպան արքայն բաբելացւոց
զորդիսն սեդեկիայ 'ի դեբղաթայ ա
ռաջի նր ։ և զամ ազատսն յուդայ կո
տորեաց արքայն բաբելացւոց ։ 7 *Եւ
զաչսն սեդեկիայ կուրացոյց. և կա
պեաց զնա պղնձի շղթայիւք տանել
զնա 'ի բաբելոն ։ 8 *Եւ զտունն թագաւ
որին՝ և զտունս ժողովրդեանն այրե
ցին քաղդէացիքն հրով. և զպարիսպսն
եմի քակեցին ։ 9 *Եւ զմնացորդս ժո
ղովրդեանն՝ որք մնացին 'ի քաղաքին.
և զանկեալսն՝ որք անկան 'ի նա. և զայլն
լքեալսն ժողովրդեանն՝ որք մնացին.
խաղացոյց նաբուզարդան դահճապետ
'ի բաբելոն ։ 10 *Եւ յաղքատաց ժողովր
դեանն՝ որոց ոչինչ գոյր, եթող նա
բուզարդան դահճապետ անդէն յերկ
րին յուդայ ։ և ետ նոցա այգիս՝ և
ջրարբս յաւուր յայնմիկ ։ 11 *Եւ ետ
պատուէր հրամանաւ նաբուգոդոնոսոր ար
քայ բաբելացւոց զերեմիայ 'ի ձեռս
նաբուզարդանայ դահճապետի՝ և ասէ ։
12 *Ա՛ռ զդա՝ և ակնած 'ի վերայ դորա՝
և մի ինչ արասցես դմա չար. այլ զոր
ինչ ասասցէ քեզ՝ արասցես դմա ։
13 *Եւ առաքեցին նաբուզարդան դահ
ճապետ՝ և նաբուսազան ներքինա
պետ. և ներգեղ՝ սարասար. ռաբմագ.
և ամ մեծամեծք արքային բաբելաց
ւոց ։ 14 *Եւ առին զերեմիայ 'ի բանտէ
անտի, և ետուն ցգոդողիայ. որդի ա
քիկամայ՝ որդւոյ սափանայ. և հանին
զնա 'ի տունն. և անդ նստէր 'ի մէջ
ժողովրդեանն ։ 15 *Եւ առ երեմիայ եղև
բան Տն մինչ էր 'ի ներգուլթեն 'ի սրա
հի բանտին՝ և ասէ ։ 16 *Երթ՝ և ասա
ցաբդիմելէքեթեովպացի՝ այսպէս ասէ
Տր զօրութեց՝ Ած իղի. ահաւադիկ
ես ածեմ զբանն իմ 'ի վր քաղաքիդ
այդորիկ 'ի չարիս՝ և ոչ 'ի բարիս. և
եղիցի առաջի աչաց քոց յաւուր յայն
միկ ։ 17 *Եւ զքեզ փրկեցից յաւուր յայն
միկ՝ ասէ Տր. և ոչ տաց զքեզ 'ի ձեռս
արանցն՝ յորոց դու երկնչիս յերեսաց
նոցա ։ 18 *Զի ապրեցուցանելով ապրե
ցուցից զքեզ. և 'ի սուր մի անկցիս. և
եղիցի քեզ անձն քո 'ի գիւտս. զի յու
սացար յիս՝ ասէ Տր ։

## ԳԼ ։ Խ ։

1 Բանն որ եղև 'ի վր երեմիայ 'ի Տէ
յետ արձակելոյն զնա նաբուզար
դանայ դահճապետի 'ի հռամայ. քան
զի առ ին զնա կապեալ ձեռնակապօք
'ի միջոյ ամ գերութե եմի, և յուդայ՝
զոր խաղացուցին 'ի բաբելոն ։ 2 *Կոչ
զնա դահճապետն՝ և ասէ ցնա ։ Տէր
Ած քո բարբառեցաւ զչարիսդ զայդ
'ի վր տեղւոյս այսորիկ ։ 3 *Եւ էած՝ և
արար Տր՝ ոմ և խօսեցաւ. զի մեղայք,
և ոչ լուայք ձայնի նորա. և եղև ձեզ
բանդ այդ ։ 4 *Եւ արդ ահա այժմ լու
ծի զքեզ այսօր 'ի ձեռնակապացդ՝ որք
են 'ի ձեռս քո. եթէ բարւոք թուի
առաջի քո գալ ընդ իս 'ի բաբելոն՝ եկ ։
և ածից 'ի վերայ քո ակն ։ և եթէ չար
թուի յաչս քո գալ ընդ իս 'ի բաբե
լոն. դադարեա՛ աստէն. ահա ամ եր
կիրս առաջի քո 'ի բարիս. ուր հաճոյ
է քեզ երթալ՝ անդր երթիցես ։
5 *Եւ մինչդեռ աստ եմ, երթ՝ յով և կա
մս. դարձիր առ գոդողիայ որդի աքի
կամայ որդւոյ սափանայ. զոր կացոյց
արքայ բաբելացւոց 'ի վերայ երկրիդ
հրէաստանի ։ և բնակեսցիս ընդ նմա
'ի մէջ ժողովրդեան. ապա թէ ոչ՝ ըստ
ամ հաճութե աչաց քոց երթալոյ եր
թիցես. և ետ նմա դահճապետն նպա
րակս և պարգևս՝ և արձակեաց ։ 6 *Եւ
եկն երեմիա առ գոդողիայ որդի աքի
կամայ 'ի մասեփայ. և նստաւ անդ 'ի
մէջ ժողովրդեան երկրին մնացելոյ.
7 *Եւ լուան ամ զօրավարք զօրացն,
որք էին 'ի բացի. ինքեանք և զօրք իւր
եանց. եթէ կացոյց արքայ բաբելաց

ւոյ զգոդողիայ որդի աքիկամայ ՚ի վ̃ր երկրին. և յանձն արար նմա զարս՝ և զկանայս. և ժողովուրդ բազում. և յաղքատաց ժողովրդեան երկրին՝ զոր ոչ խաղացոյց ՚ի բաբիլոն: 8 *Եկին առ գոդողիայ ՚ի մասեփայ. իսմայէլ որդի նաթանայ. յօնան. և յօնաթան որդիք կարէի. և սարեմ որդի թանաթեմայ. և որդի քոփերի որդւոյն ետոփատայ. և յեզոնիա որդի մաքաթայ. ինքեանք և արք որք ընդ նոսա: 9 *Եւ երդուաւ նն̃ գոդողիա որդի աքիկամայ. որդւոյ սափանայ. և արանցն որք ընդ նոսա՝ և ասէ. մի երկնչիք յերեսաց ծառայիցն քաղդէացւոց. այլ բնակեցարուք յերկրիս. և հարկեցարուք արքային բաբիլացւոց. և բարի եղիցի ձեզ: 10 *Եւ ես աՀաւասիկ նստիմ ՚ի մասեփայ. կալ ընդդէմ քաղդէացւոց՝ որք եկանիցեն ՚ի վերայ ձեր. և դուք ժողովեցէք զգինի՝ և զմիրգ. և ժողովեցէք իւղ յամանս ձեր. և բնակեցէք ՚ի քաղաքս ձեր. զորս կալայք քաջութ̃: 11 *Եւ ամ̃ հրէայք՝ որք էին յերկրին մովաբացւոց. և ՚ի մէջ որդւոցն ամոնայ. և որք յեդովմ՝ և որք յամ̃ երկրի. լուան եթէ եթող արքայն բաբիլացւոց մնացորդս ՚ի հրէաստանի. և կացոյց նոցա վերակացու՝ զգոդողիայ որդի աքիկամայ որդւոյ սափանայ: 12 *Դարձան անդրէն ամ̃ հրէայք յամ̃ տեղեաց՝ ուր ցրուեցան անդր. և եկին յերկիրն յուդայ. առ գոդողիայ ՚ի մասեփայ, և ժողովեցին զգինի և զմիրգ բազում յոյժ: 13 *Եւ յօնան որդի կարէի. և ամ̃ զօրավարք զօրացն. որք էին ՚ի բացի. եկին առ գոդողիայ ՚ի մասեփայ: 14 *Եւ ասեն ցնա. զայն գիտիցես զի բարելիս թագաւոր որդւոցն ամոնայ, արձակեաց առ իսմայէլ որդի նաթանայ սպանանել զքեզ: և ոչ հաւատաց նն̃ գոդողիայ որդի աքիկամայ: 15 *Եւ յօնան որդի կարէի ասէ գաղտ ցգոդողիայ ՚ի մասեփայ. երթայց սպանից զիսմայէլ զորդի նաթանայ. և մի ոք գիտասցէ: գուցէ երբէք սպանանիցէ զքեզ. և ցրուեսցին հրէայք՝ որք ժողովեալ են առ քեզ. և կորնչիցին մնացորդք յուդայ: 16 *Եւ ասէ գոդողիա որդի աքիկամայ ցյօնան որդի կարէի. մի արասցես ըստ բանիդ այդորիկ. զի սուտ խօսեցար դու զիսմայէլէ:

4 Թագ. 25.24.

առ ՚ի քեզ զիսմայէլ

## ԳԼ: ԽԱ.

1 Եւ եղև յամսեանն եօթներորդի եկն իսմայէլ որդի նաթանայ. որդւոյ եղիսամայ յազգէ թագաւորին՝ և ծառայք թագաւորին՝ և տասն այր ընդ նմա առ գոդողիայ որդի աքիկամայ ՚ի մասեփայ: և կերին հաց ՚ի միասին ՚ի մասեփայ: 2 *Եւ յարեաւ իսմայէլ որդի նաթանայ. և տասնեքին արքն որք ընդ նմա. և եհար զգոդողիայ որդի աքիկամայ որդւոյ սափանայ սրով՝ և սպան զնա. զոր կացուցեալ էր արքային բաբիլացւոց ՚ի վ̃ր երկրին: 3 *Եւ զամ̃ հրէայսն՝ որք էին ընդ գոդողիայ ՚ի մասեփայ. և զամ̃ քաղդէացիս՝ որք անդ գտան. զարս պատերազմօղս կոտորեաց իսմայէլ: 4 *Եւ եղև յերկրորդում աւուր յետ սպանանելոյ անդ զգոդողիայ. և ոք ոչ գիտէր: 5 *Եկին արք ՚ի սիքիմայ, ՚ի սելովայ՝ և ՚ի շամրինէ. արք ութսուն. գերծեալ զմօրուս՝ և պատառեալ զհանդերձս կոծելով. և մաննայ և կնդրուկ ՚ի ձեռս նն̃ տանել ՚ի տուն Տ̃ն: 6 *Ել իսմայէլ որդի նաթանայ ընդ առաջ նոցա ՚ի մասեփայ. երթալով երթայր՝ և լայր: և եղև իբրև մերձեցաւ առ նոսա՝ ասէ. մտէք առ գոդողիայ որդի աքիկամայ: 7 *Եւ եղև իբրև մտին ՚ի մէջ քաղաքին. կոտորեաց զնոսա իսմայէլ որդի նաթանայ ՚ի մէջ քաղաքին. և ամաց ՚ի ջրհոր. ինքն և արքն՝ 8 որք էին ընդ նմա: *Եւ արք տասն գտան անդ. և ասեն ցիսմայէլ. մի սպանաներ զմեզ. զի գոն մեզ գանձք ՚ի բացի. ցորեան և գարի՝ մեղր և իւղ. և զանց արար, և ոչ սպան զնոսա ՚ի մէջ 9 եղբարց իւրեանց: *Եւ ՚ի ջրհորն յոր ամաց իսմայէլ զմարմինս արանցն, զորս կոտորեաց վ̃ն գոդողիայ՝ ջրհոր մեծ էր. զոր արար արքայ ասա՝ յերեսաց բայասայ արքային իՀլի. զայն ելից իսմայէլ որդի նաթանայ վիրաւորօք: 10 *Եւ դարձոյց իսմայէլ զամենայն ժողովուրդն՝ որ մնացեալ էր ՚ի մասեփայ. և զդստերս թագաւորին. Հանդերձ ամ̃ սինլիքորօք ժողովրդեանն՝ որք էին ՚ի մասեփայ. զորս յանձնարարեալ էր նաբուզարդանայ դահճապետի, գոդողիայ որդւոյ աքիկամայ. և կանխեաց իսմայէլ որդի նաթանայ ընդ առաւօտս՝ և գնաց յայնկոյս առ որդիսն ամոնայ: 11 *Եւ լուաւ յօնան որդի կարէի՝ և ամ̃ զօրավարք արանցն՝ որք ը̃ նմա էին զամ̃ չարիսն՝ զորս գործեաց իսմայէլ որդի նաթանայ: 12 *Ժողովեցին զամ̃ զօրականսն իւրեանց. և խաղացին երթալ տալ պատերազմ ընդ իսմայէլի որդւոյ նաթանայ: և գտին զնա ՚ի վերայ ջուրցն բազմաց՝ որք ՚ի գաբաւոն էին: 13 *Եւ եղև՝ իբրև տեսին ամ̃ ժողովուրդն՝ որք էին ընդ իսմայէլի՝ զյօնան որդի կարէի՝ և զամ̃ զօրավարս

վարս զօրացն՝ որք էին ընդ նմա՝ ուրախ եղեն։ 14 * Եւ դարձան առ նա ամ ժողովուրդն՝ զոր գերեաց Իսմայէլ 'ի Մասեփայ. եւ եկին առ Յովնան որդի Կարեէի։ 15 * Բայց Իսմայէլ որդի Նաթանեայ՝ ապրեցաւ ութն արամբ յերեսաց Յովնանայ. եւ անկաւ առ որդիսն Ամոնայ։ 16 * Եւ էառ Յովնան որդի Կարեէի. եւ ամ զօրավարք զօրացն՝ որք էին ընդ նմա. զամ մնացորդս ժողովրդեանն՝ զորս Թափեաց յԻսմայէլէ որդւոյ Նաթանայ 'ի Մասեփայ. յետ սպանանելոյն զԳոդողիայ որդի Աքիկամայ զարս հզօրս պատերազմօղս. եւ զկանայս՝ եւ զայրս՝ եւ զներքինիս. զորս էառ յերկրէն Գաբաւօնացւոց։ 17 * Եւ գնացին՝ եւ նստան յերկրին Բերօթքամայ հանդէպ Բեթղեհեմի՝ երթալ մտանել յերկիրն Եգիպտացւոց։ 18 * Յերեսաց Քաղդէացւոցն. քանզի զահի հարան յերեսաց նց. զի սպան Իսմայէլ զԳոդողիայ զորդի Աքիկամայ. զոր կացոյց արքայն Բաբելացւոց 'ի վերայ երկրին։

## ԳԼ: ԽԲ:

1 Եւ մատեան ամ զօրավարք զօրացն՝ եւ Յովնան որդի Կարեէի՝ եւ Յեզոնիա որդի Ովսէի. եւ ամ ժողովուրդն 'ի փոքուէ մինչեւ ցմեծամեծս։ 2 * Եւ ասեն ցԵրեմիայ մարգարէ. անկցի գութ մեր առաջի երեսաց քոց. եւ կաց յաղօթս վն մեր առ Տր Ած քո. եւ վն մնացորդացս այսոցիկ. զի մնացաք սակաւք 'ի բազմաց. որպէս աչք տեսանեն զմեզ։ 3 * Եւ պատմեսցէ մեզ Տր Ած զՃանապարհ ընդ որ գնասցուք. եւ զբանն, զոր արասցուք։ 4 * Եւ ասէ ցնս Երեմիա մարգարէ. լուայ աւադիկ՝ ես կացից յաղօթս առ Տր Ած մեր վասն բանից ձերոց. եղիցի՝ որ ինչ բան պատասխանի տացէ Տր՝ պատմեցից ձեզ. եւ ոչ թաքուցից 'ի ձէնջ բան մի։

5 * Եւ նոքա ասեն ցԵրեմիայ՝ եղիցի մեզ Տր 'ի վկայ՝ արդար եւ հաւատարիմ. եթէ ոչ ըստ ամ բանի՝ զոր առաքեսցէ զքեզ Տր Ած քո առ մեզ՝ այնպէս արասցուք։ 6 * Եթէ բարի եւ եթէ չար. ձայնի Տն Այ մերում առ որ առաքեմք զքեզ՝ հնազանդիմք՝ զի բարի եղիցի մեզ. եւ լուիցուք ձայնի Տն Այ մերոյ։ 7 * Եւ եղեւ յետ աւուրց տասանց. եղեւ բան Տն առ Երեմիայ։ 8 * Եւ կոչեաց զՅովնան որդի Կարեէի. եւ զամ զօրավարս զօրացն՝ որք էին ընդ նմա։ * Եւ զամ ժողովուրդն. 'ի փոքուէ մինչեւ ցմեծամեծս։ 9 * Եւ ասէ ցնոսա. այսպէս ասէ Տր Ած Իէլի՝ առ որ առաքեցէքն զիս արկանել գութ 10 առաջի նորա։ * Եթէ նստելով նստիցէք յերկրիս յայսմիկ. շինեցից զձեզ՝ եւ ոչ քակեցից. տնկեցից զձեզ՝ եւ ոչ խլեցից. զի մեղմացեալ եմ 'ի չարեացն՝ զորս ասացի առնել ձեզ։ 11 * Մի երկնչիք յերեսաց արքային Բաբելացւոց. յորմէ զարհուրեալ էիք յերեսաց նորա. մի երկնչիք 'ի նմանէ՝ ասէ Տր. զի ընդ ձեզ եմ ես փրկել զձեզ. եւ ապրեցուցանել 'ի ձեռաց նորա։ 12 * Եւ արկից զձեօք գութ. եւ ողորմեցայց ձեզ յերկրի ձերում. (Եւ դարձուցից զձեզ։) 13 * Եւ եթէ ասիցէք՝ ոչ նստցուք յերկրիս յայսմիկ. եւ ոչ լուիցուք ձայնի Տն Այ մերոյ։ 14 * Այլ երթիցուք յերկիրն Եգիպտացւոց՝ եւ ոչ տեսցուք զպատերազմ. եւ զձայն փողոյ ոչ լուիցուք. եւ հացի ոչ քաղցիցուք. եւ անդ բնակիցուք։ 15 * Եւ արդ վասն այդորիկ լուարուք զպատգամս Տն մնացորդք Հրէաստանի. այսպէս ասէ Տր զօրութեց՝ Ած Իէլի. եթէ դուք տալովտացէք զերեսս ձեր մտանել յԵգիպտոս՝ եւ անդ բնակել։ 16 * Եւ եղիցի սուրն՝ յորմէ երկնչէիք, անդ գտցէ զձեզ յերկրին Եգիպտացւոց. եւ սովն յորմէ կասկածէիք, անդ հասցէ ձեզ յերկրին Եգիպտացւոց. եւ անդ մեռանիցիք։ 17 * Եւ եղիցին ամ արք՝ որք դէմեդին յերկիրն Եգիպտացւոց մտանել եւ բնակել անդ, սրով՝ եւ սովու՝ եւ մահուամբ սատակեսցին. եւ ոչ ոք եղիցի 'ի նոցանէ ապրեալ 'ի չարեացն. զորս ես ածից 'ի վերայ նց։ 18 * Զի այսպէս ասէ Տր զօրութեց՝ Ած Իէլի. որպէս կաթեցաւ սրտմտութի բարկութե իմոյ 'ի վն բնակչաց Եէմի. նոյնպէս կաթեսցի սրտմտութի իմ 'ի վն ձեր 'ի մտանելն ձեր յԵգիպտոս. եւ եղիջիք յանապատ եւ վտարանդիք. եւ 'ի նզովս՝ եւ 'ի նախատինս. եւ մի եւս տեսանիցէք զտեղիս զայս։ 19 * Յորմէ խօսեցաւ Տր 'ի վն ձեր՝ եւ 'ի վն մնացորդացն Յուդայ՝ թէ մի մտանիցէք յԵգիպտոս. բայց այժմ գիտելով գիտասջիք. քանզի վկայութի դնեմ ես ձեզ այսօր։ 20 * Զի չարիս գործէք յանձինս ձեր. զի առաքեցիք զիս առ Տր Ած ձեր. եւ ասացիք. յաղօթս կաց վն մեր առ Տր Ած մեր. եւ ըստ ամի զորս խօսիցի քեզ Տր Ած մեր, նոյնպէս պատմեա մեզ՝ 21 եւ արասցուք։ * Եւ պատմեցի ձեզ այսօր՝ եւ ոչ լուայք ձայնի Տն Այ ձերոյ՝ զոր առաքեացն առ ձեզ։ 22 * Եւ արդ՝ գիտասջիք. եթէ սրով՝ եւ սովու՝ եւ մահուամբ սատակեսջիք 'ի տեղւոջն՝ յորում դուք կամիք մտանել եւ բնակել անդ։

## Գլ: ԽԳ:

1 Եւ եղեւ՝ իբրեւ դադարեաց երեմիա 'ի խօսելոյ ընդ ամ ժողովրդեանն զամ բանս Տն Այ նց. զորս առաքեաց Տր Աճ նց առ նոսա: 2 *Եւ ասեն՝ յեզոնիա որդի օսէի. եւ յօնան որդի կարէի. եւ ամ արք ամբարտաւանք ցերեմիայ. սուտ խօսիս դու. ոչ առաքեաց զքեզ Տր Աճ մեր առ մեզ՝ ասել. եթէ մի մտանէք յեգիպտոս բնակիլ անդ: 3 *Այլ բարուք որդի ներեայ գրգռէ զքեզ ընդ մեզ. զի տացես զմեզ 'ի ձեռս քաղդեացւոց կոտորել. եւ տանիլ զմեզ գերի 'ի բաբիլոն: 4 *Եւ ոչ լուաւ յօնան որդի կարէի եւ ամ զօրավարք զօրացն, եւ ամ ժողովուրդն ձայնի Տն բնակիլ յերկրին յուդայ: 5 *Եւ էառ յօնան որդի կարէի՝ եւ ամ զօրավարք զօրացն զամ մնացորդս յուդայ՝ որք դարձեալ էին յամ ազգաց՝ ուր ցրուեալ էին անդր բնակիլ յերկրին յուդայ: 6 *Զարս եւ զկանայս եւ զմանկտիս. եւ զդստերս թագաւորին. եւ զանձինս, որք մնացեալ էին 'ի նաբուզարդանայ դահճապետէ. առ գոդողիայ որդւոյ աքիկամայ, որդւոյ սափանայ. եւ զերեմիայ մարգարէ. եւ զբարուք որդի ներեայ: 7 *Եւ գնացին յերկիրն եգիպտացւոց՝ վն չլսելոյ ձայնի Տն. եւ չոգան 'ի տափնաս: 8 *Եւ եղեւ բան Տն առ երեմիայ 'ի տափնաս՝ եւ ասէ: 9 *Առ դու քեզ քարինս մեծամեծս. եւ թաղեա զնոսա յաղխսադրան թաքստեան. 'ի մուտս ապարանիցն փարաւոնի 'ի տափնաս առաջի արանց յուդայ: 10 *Եւ ասասցես նոսա. այսպէս ասէ Տր Աճ իղի. ահաւասիկ ես առաքեմ՝ եւ ածեմ զնաբուգոդոնոսոր արքայ բաբիլացւոց զծառայ իմ. եւ արկցէ զաթոռ իւր 'ի վերայ քարանցդ այդոցիկ՝ զորս ծածկեցի: եւ առցէ զզէն իւր զինքեամբ 'ի վր դոցա: 11 *Եւ մտցէ՝ եւ հարցէ զերկիրդ եգիպտոսի. զոր 'ի մահ, 'ի մահ. եւ զոր 'ի գերութի, 'ի գերութի. եւ զորս 'ի սուր, 'ի սուր: 12 *Եւ արկցէ հուր 'ի տունս աստուծոց նց՝ եւ այրեսցէ զնս. եւ տարցի գերի. եւ որոնեսցէ զերկիրդ եգիպտացւոց. որպ որոնէ հովիւ զհանդերձս իւր. եւ ելցէ այտի խաղաղութբ: 13 *Եւ խորտակեսցէ զսիւնս արեգ-քաղաքի. որ յերկրիդ եգիպտացւոց. եւ զմեհեանս դից նոցա այրեսցէ հրով:

## Գլ: ԽԴ:

1 Բանն որ եղեւ առ երեմիայ 'ի վր ամ հրէից. որք բնակեալ էին յերկրին եգիպտացւոց. եւ որք նստէին 'ի մագդոլի՝ եւ 'ի տափնաս. եւ 'ի մեմփիս. եւ յերկիրն պաթուրէս: եւ ասէ: 2 *Այսպէս ասէ Տր զօրութեց՝ Աճ իղի: դուք ինքնին իսկ գիտէք զամ չարիս՝ զոր ածի 'ի վր եհմի. եւ 'ի վր ամ քաղաքաց հրէաստանի. եւ ահա կան աւերակ այսօր 'ի բնակչաց: 3 *Յերեսաց չարեաց իւրեանց՝ զորս արարին առ 'ի դառնացուցանել զիս: զի գնացին խունկս արկանել՝ եւ պաշտել զաստուածս օտարս. զորս ոչ գիտէիք դուք՝ եւ հարքն ձեր: 4 *Եւ առաքեցի առ ձեզ զամ ծառայս իմ զմարգարէս ընդ առաւօտս առաւօտս՝ եւ ասէի. մի գործէք զիրս պղծութեդ այդորիկ՝ զորս ատեցի: 5 *Եւ ոչ լուան ինձ. եւ ոչ խոնարհեցուցին զունկն իւրեանց դառնալ 'ի չարեաց իւրեանց. չարկանել խունկս աստուծոց օտարաց: 6 *Եւ կաթեցաւ սրտմտութի բարկութե իմոյ՝ եւ բորբոքեցաւ 'ի դրունս յուդայ՝ եւ արտաքոյ եհմի. եւ եղեն յաւեր՝ եւ յանապատ որպ եւ այսօր: 7 *Եւ արդ այսպէս ասէ Տր սաբաւոթ՝ Աճ իղի. ընդէ՞ր առնէք դուք չարիս մեծամեծս յանձինս ձեր. սատակել զձեր զայր՝ եւ զկին՝ եւ զմանկունս ստնդիայս 'ի միջոյ յուդայ. առ 'ի չմնալոյ ումեք 'ի ձէնջ: 8 *Դառնացուցանել զիս գործօք ձեռաց ձերոց. արկանել խունկս աստուծոց օտարաց յերկրիդ եգիպտացւոց. յոր դուք մտիք բնակիլ այդր. զի սատակիցիք՝ եւ լինիցիք յանէծս՝ եւ 'ի նախատինս ընդ ամենայն ազգս երկրի: 9 *Առ 'ի չմոռանալոյ ձեզ զչարիս հարցն ձերոց. եւ զչարիս թագաւորացն յուդայ. եւ զչարիս կանանց նց. եւ զչարիս ձեր՝ եւ զչարիս կանանց ձերոց. զոր արարին յերկրին յուդայ. եւ արտաքոյ եհմի: 10 *Եւ ոչ դադարեցին մինչեւ ցայսօր՝ եւ ոչ երկեան. եւ ոչ կացին յօրէնս իմ. եւ 'ի հրամանս՝ զորս ետու առաջի երեսաց ձերոց. եւ առաջի երեսաց հարց ձերոց: 11 *Վս այնորիկ այսպէս ասէ Տր զօրութեց Աճ իղի: ահաւասիկ ես հաստատեմ զերեսս իմ 'ի վր ձեր 'ի չարիս. սատակել զամ յուդայ: 12 *Եւ առցեն զմնացորդսն յուդայ՝ որպ եղեն 'ի մտանել յերկիրս եգիպտացւոց բնակիլ աստ. կորուսանել զամ մնացորդսն՝ որք են յեգիպտոս. եւ անկցին 'ի սուր. եւ սատակեսցին սովու. 'ի փոքունէ մինչեւ ցմեծամեծս. սրով եւ սովու մեռանիցին. եւ եղիցին 'ի նզովս՝ եւ 'ի կորուստ՝ եւ յանէծս՝ եւ 'ի նախատինս: 13 *Եւ այց արարից 'ի վր նց. որք նստին յերկրին եգիպտացւոց. որպէս արարի այց եհմի

սրով՝

սրով՝ և սովով՝ և մահուամբ ։ 14 *Եւ ոչ ոք ապրեսցի 'ի մնացորդացն յուդայ. որք բնակեալ են յերկրին եգիպտացւոց. դառնալ յերկիրն յուդայ. որում ակնունէին յանձինս իւրեանց դառնալ բնակիլ անդ. և մի դարձցին, բայց միայն ապրեալքն ։ 15 *Եւ պատասխանի ետուն երեմիայի ամ արք. որք գիտէին՝ թէ արկանեն խունկս կանայք իւրեանց աստուծոց օտարաց. և ամ կանայք՝ որք կային անդ ժողովք մեծամեծք. և ամ ժողովուրդն. որք բնակեալ էին յերկրին եգիպտացւոց 'ի պաթուրէս՝ և ասեն ։ 16 *Բանիդ՝ զոր խօսեցար առ մեզ յանուն Տն՝ ոչ լուիցուք ։ 17 *Այլ առնելով արասցուք զամ բան՝ որ ելանէ 'ի բերանոյ մերմէ. արկանել խունկս տիկնոջն երկնից. և նուիրել նուէրս. որպէս արարաք մեք՝ և հարքն մեր. և թագաւորքն մեր՝ և իշխանք մեր. և 'ի քաղաքս յուդայ՝ և արտաքոյ երմի. և էաք հացալիցք՝ և փափկացեալք. և չար ինչ ոչ տեսանէաք ։ 18 *Եւ իբրև դադարեցաք յարկանելոյ խունկս տիկնոջն երկնից. և նուիրելոյ նմա նուէրս՝ նուազեցաք յամէ. և սրով և սովու սատակեցաք ։

Եր. 7.18.

19 *Եւ զի մեք արկաք խունկս տիկնոջն երկնից. և նուիրեցաք նմա նուէրս. մի թէ առանց արանց մերոց արարաք նմա հաստեայս և կարկանդակս. և նուիրեցաք նմա նուէրս ։ 20 *Եւ ետ պատասխանի երեմիա ամ ժողովրդեանն հանդերձ կանամբքն. և ամ ժողովրդեանն՝ որք ետուն նմա զայն բանս պատասխանի՝ և ասէ ։ 21 *Ոչ ապաքէն ըզ խունկսն զոր արկանէք 'ի քաղաքսն յուդայ՝ և արտաքոյ երմի. դուք՝ և հարքն ձեր՝ և թագաւորքն ձեր. և իշխանքն ձեր. և ժողովուրդ երկրին. յիշեաց Տր՝ և անկաւ 'ի սիրտ նր ։ 22 *Եւ ոչ կարաց Տր համբերել յերեսաց չարաց իրաց ձերոց. և գարշելեացն զոր առնէիք ։ և եղև երկիրն ձեր յաւերակ. և յանապատ՝ և 'ի նզովս առ 'ի չգոյէ բնակչաց. որպէս այսօր յերեսաց դոցա ։ 23 *Որոց խունկսդ արկանէքդ. և որովք մեղանչէք Տն՝ և ոչ լսէք ձայնի Տն. և ըստ օրինաց նր՝ և ըստ վկայութեց՝ և ըստ հրամանաց նր ոչ գնայք. վասն այնորիկ գտին զձեզ չարիքդ այդոքիկ որպէս և այսօր ։ 24 *Եւ ասէ երեմիա ցամ ժողովուրդն. և ցամ կանայսն ։ լուարուք զպատգամ Տն ամ յուդայ. որք էք յերկրիս եգիպտացւոց ։ 25 *Այսպէս ասէ Տր զօրութեց Այ իէլի ։ դուք՝ և կանայք ձեր խօսեցայք բերանովք ձերովք. և ձեռօք ձերովք վճարեցիք ։ ասէք, առնելով արասցուք զդաւանութիւնս մեր՝ զոր դաւանեցաք. արկանել խունկս տիկնոջն երկնից. և նուիրել նուէրս. և կալով կացէք 'ի դաւանութեանն ձերում. և առնելով արարէք զուխտն ձեր ։ 26 *Վն այդորիկ լուարուք զպատգամ Տն ամ յուդայ՝ որք բնակեալդ էք յերկրին եգիպտացւոց ։ ահաւասիկ երդուայ յանձն իմ մեծ՝ ասէ Տր Այ. եթէ կոչեսցի ևս անուն իմ 'ի բերանոյ ամ առն յուդայ. ասել եթէ կենդանի է Տր՝ յամ երկրիս եգիպտացւոց ։ 27 *Զի ահաւասիկ ես զարթուցեալ եմ 'ի վր դոցա չարչարել զդոսա. և ոչ առնել բարի ։ և սատակեսցին ամ արք յուդայ. որք բնակեալք են յերկրին եգիպտացւոց սրով և սովու. մինչև նուազեսցին ։ 28 *Եւ ապրեալքն 'ի սրոյ՝ դարձցին յերկրէս եգիպտացւոց յերկիրն յուդայ՝ արք սակաւք թուով. և ծանիցեն ամ մնացորդքն յուդայ՝ որք բնակեալք են յերկրին եգիպտացւոց. թէ ո՞յր բան կայ, իմ թէ նոցա ։ 29 *Եւ այս ձեզ նշանակ՝ ասէ Տր. եթէ արարից ձեզ այց 'ի տեղւոջդ յայդմիկ. զի գիտասջիք թէ կալով կացցեն բանք իմ 'ի վր ձեր 'ի չարիս ։ 30 *Այսպէս ասէ Տր. ահաւասիկ ես տաց զփարաւոն զվափրէ արքայ եգիպտացւոց 'ի ձեռս թշնամւոյ իւրոյ. և 'ի ձեռս խնդրողաց անձին իւրոյ. որպէս ետու զսեդեկիայ արքայ 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց թշնամւոյ իւրոյ. և խնդրողի անձին նորա ։

Հեփրեէ

## Գլ. ԽԵ.

1 Բանն՝ զոր խօսեցաւ երեմիա մարգարէ. առ բարուք որդի ներեայ՝ յորժամ գրեաց զբանս զայսոսիկ 'ի մատենի, 'ի բերանոյ երեմիայի. յամին չորրորդի յովակիմայ որդւոյ յովսեայ արքայի յուդայ ։ 2 *Այսպէս ասէ Տէր Այ իէլի 'ի վր քո բարուք ։ 3 *Որ ասացեր թէ վայ ինձ՝ վայ ինձ. զի յաւել Տր աշխատութի 'ի վր ցաւոց իմոց. ննջեցի հեծութբ՝ և զհանգիստ ոչ գտի ։ 4 *Այսպէս ասասցես ցնա ։ այսպ ասէ Տր. ահա զորս ես շինեցի, ես ինձէն քակեցից. և զորս ես տնկեցի՝ ես ինձէն խլեցից՝ զամ զերկիրն զայն ։ 5 *Եւ դու խնդրես քեզ մեծամեծս, մի խնդրեր ։ զի ահա ես ածից չարիս 'ի վր ամ մարմնոյ՝ ասէ Տր. և տաց քեզ զանձն քո 'ի գիւտս յամ տեղւոջ՝ ուր երթիցես անդր ։

'Ի վերայ Եգիպտոսի.

## Գլ. ԽԶ.

1 Բանն Տն̃ որ եղեւ առ Երեմիայ մարգարէ 'ի վ̃ր ա̃մ ազգացն եգիպտացւոց: 2 *'Ի վերայ զօրացն փարաւոնի. Նեքաւով արքայի եգիպտացւոց. որ էր առ եփրատ գետով 'ի քարքամիս. զոր եհար նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց. յամին չորրորդի յովակիմայ որդւոյ յոսիայ արքային հրէաստանի: 3 *Առէք զզէն՝ եւ վահանս 'ի պատերազմ: 4 *Կազմեցէք զերիվարս. հեծարուք սպառազէնք. դիք զսաղաւարտս՝ առէք յառաջ զգեղարդունս. զգեցարուք զզրահս ձեր: 5 *Իսկ այդ զինչ է: դոքա աւադիկ զարհուրեալ խին են. եւ յետս ընդդէմ շարժին. զի զօրաւորք նոցա հարան, 'ի փախուստ կային. եւ ոչ դարձցին 'ի դոցանէ պատեալքն շուրջանակի՝ ասէ Տր̃: 6 *Մի փախիցէ թեթեւն. եւ մի ապրեսցի հզօրն. 'ի կողմանս հիւսիսոյ առ եփրատ գետով. տկարացան, կործանեցան: 7 *Ո՞վ է սա. որ իբրեւ զգետ յարուցեալ է. եւ իբրեւ զգետս կուտակեալ զջուրս ջուրքն: 8 *Ջուրն եգիպտացւոց իբրեւ զգետ ելանէ. եւ իբրեւ զգետ խռովին ջուրք նր̃. եւ ասէ՝ ելից, եւ ծածկեցից զերկիր. կորուսից զքաղաք. եւ զբնակիչս նորա: 9 *Հեծեալք յերիվարս. կազմեցէք կառս. եւ ելէք պատերազմողք եթէովպացւոց. եւ լիբեացիք վառեալք զինու. եւ լիդացիք ելէք՝ լարեցէք զաղեղունս: 10 *Օր օրն այն Տն̃ Ա̃Յ մերոյ. օր վրէժխնդրութե̃ է. առնուլ զվրէժ 'ի թշնամեաց իւրոց. եւ կերիցէ սուր՝ եւ յագեսցի եւ արբեսցի յարենէ նց̃: զի զոհ Տն̃ զօրութեց̃ է յերկրէն հիւսիսոյ. եւ 'ի վ̃ր գետոյն եփրատայ: 11 *Ել գաղաադ. եւ էառ զեղ ռետին կուսի դստերն եգիպտացւոց: 'ի զուր յաճախեցեր զբժշկութի̃ս քո. օգուտ չիք ուստեք քեզ: 12 *Լուան զգոյժ քո ազգք. եւ աղաղակով քով լի եղեւ երկիր. զի պատերազմող առ պատերազմողի տկարացաւ. անկան երկոքեան 'ի միասին: 13 *Բանն զոր խօսեցաւ Տէր 'ի ձեռն Երեմիայի մարգարէի՝ 'ի գալ նաբուգոդոնոսորայ արքայի բաբելացւոց եւ հարկանել զերկիրն եգիպտացւոց: 14 *Գոյժ արարէք յեգիպտոս. եւ հնչեցէք 'ի մագդոլ. եւ պատուհէր տուք 'ի մեմփիս. ա՛նդ արարէք 'ի տափնաս. թէ արի՛ եւ պատրաստեաց. զի եկեր սուր զկուռս քո: 15 *'Ի փախուստ դարձաւ ցուլն քո ընտիր, ո՛չ մնաց՝ զի Տր̃ լքոյց զնա: 16 *Եւ բազմութի̃ն տկարացաւ. եւ անկան իւրաքանչիւր առ ընկերի իւրում, եւ ասեն. արի՛ք՝ եւ դարձցուք առ իւրաքանչիւր ժողովուրդ մեր. եւ յիւրաքանչիւր յաշխարհ իւր՝ յերեսաց յունական սրոյն: 17 *Կոչեցէք զանուն փարաւոնի արքային եգիպտացւոց. սաւոն. եւ եբիր. եմովեդ: 18 *Կենդանի եմ ես՝ ասէ Տր̃. որոյ թագաւոր զօրութեց անուն է նորա. զի կդաշաւանդ 'ի լերինս. եւ իբրեւ զկարմեղոս 'ի ծովու, եկեսցէ: 19 *Հանդերձ գերութե̃ արա քեզ դուստր եգիպտացւոց. զի մեմփիս յապականութի̃ն եղիցի. եւ կոչեսցի նմա վա՛յ առ 'ի չգոյէ բնակչացն նր̃: 20 *Երինջ զարդարեալ՝ եւ գեղեցիկ եգիպտոս հատ հատաւ 'ի հիւսիսոյ եկն 'ի վ̃ր նր̃: 21 *Եւ վարձանք նր̃ 'ի նմա. իբրեւ եզինք պարարակք. զի եւ նոքա 'ի փախուստ դարձան առ հասարակ. եւ ոչ հանդարտեցին. զի օր կորստեան եկն 'ի վ̃ր նոցա. եւ ժամանակ վրէժխնդրութե̃: 22 *Ձայն նորա իբրեւ զօձի՝ որ շչիցէ. զի ընդ աւազ գնասցեն. տապարաւորք եկեսցեն 'ի վ̃ր նց̃ իբրեւ զփայտահարս: 23 *Հարէք զանտառս նր̃՝ ասէ Տր̃ Ա̃Ծ, զորոյ ոչ՛ք առնուցու զչափ. զի բազմասցի առաւել քան զմարախ. եւ թիւ ոչ իցէ նց̃: 24 *Յամօթ եղեւ դուստր եգիպտացւոց. մատնեցաւ 'ի ձեռս հիւսիսային զօրացն: 25 *Ասէ Տր̃ զօրութեց Ա̃Ծ իղ̃ի: ահաւասիկ ես խնդրեցից զվրէժ յամոնայ որդւոյ նր̃. 'ի փարաւոնէ՝ եւ յեգիպտացւոց՝ եւ 'ի դից նց̃. 'ի թագաւորաց նր̃. եւ 'ի փարաւոնէ եւ 'ի յուսացելոց 'ի նա: 26 *Եւ մատնեցից զնոսա 'ի ձեռս խնդրողաց անձանց նոցա. եւ 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց. եւ 'ի ձեռս ծառայից նորա. եւ յետ այնորիկ բնակեցուցից իբրեւ զառաջինն՝ ասէ Տր̃: 27 *Բայց դու մի՛ երկնչիցիս ծառայ իմ յակոբ. եւ մի՛ զարհուրիցիս իղ̃: զի ահաւասիկ ես զերծուցանեմ զքեզ 'ի հեռաստանէ. եւ զզաւակ քո 'ի գերութե̃ նոցա: եւ դարձցի յակոբ՝ եւ դադարեսցէ. եւ ննջեսցէ՝ եւ ո՛չ ոք իցէ որ լլկեսցէ զնա: 28 *Եւ դու մի՛ երկնչիր ծառայ իմ յակոբ՝ ասէ Տր̃ զի ես ընդ քեզ եմ. թէ արարից վախճան ա̃մ ազգաց՝ ուր մերժեցի զքեզ անդր. այլ քեզ ո՛չ արարից վախճան. եւ խրատեցից զքեզ յիրաւունս. եւ քաւելով ո՛չ քաւեցից զքեզ.

Եսայ 43.1. եւ 44.2.

## Գլ. ԽԷ.

1 'Ի վերայ այլազգեաց: Բանն Տն̃ որ եղեւ առ Երեմիայ մարգարէ 'ի վ̃ր այլազգեաց՝ մինչչեւ հարեալ էր փարաւ-

բանոնի զգաղայ։ *Այսպէս ասէ Տր. 2
ահաւասիկ ջուրք ելանեն 'ի հիւսիսոյ.
և եղիցին հեղեղատք յողողանել. և
ողողեսցեն զերկիրն լրիւ իւրով. զքա
ղաքն և զբնակիչս նր։ բողոք բարձցեն
մարդիկ. և աղաղակեսցեն ամ բնա_
կիչք երկրին։ *'Ի ձայնէ ասպատակի 3
նր. 'ի զինուց ոտից նորա. և 'ի շաչելոյ
կառաց նորա. և 'ի շառաչելոյ անուոց
նր. և ոչ դարձցին հարքն առ որդիս
իւրեանց։ *Լքան 'ի ձեռաց իւրեանց' 4
յաւուր յորում գայցէ կորուսանել
զամ այլազգիս։ և կորուսից զծուր'
և զծայդան' և զամ մնացորդս օգնա_
կանութե նց։ և սատակեսցէ Տր զայլ_
ազգիս. զմնացորդս կղզեայն' և զգամ_
րաց։ *Հասցէ կնտութի 'ի վր գազայ 5
կործանեցաւ ասկաղոն. և մնացորդք
ենակիմայ։ մինչև յե՞րբ կոտորիցես։
*Սուրդ Տն մինչև ցե՞րբ ոչ դադա_ 6
րիցես. դարձիր 'ի պատեանս քո. դա_
դարեա՛ և վերացիր։ *Զիա՞րդ դա_ 7
դարիցէ. զի Տր հրամայեաց զնա 'ի
վերայ ասկաղոնի. 'ի վերայ ծովեզե_
րեայցն մնացելոց զարթնուլ։

(margin: հրամայ_ եաց նմա)

## Գլ. ԽԸ.

'Ի վերայ Մովաբու։ Այսպէս ասէ Տր 1
զօրութեց Այ իՂի. վա՛յ 'ի վր
Նաբաւոյ, զի կորեաւ' յամօթ եղև.
առաւ կարիաթեմ. յամօթ եղև մա_
սոգամբ. 'ի պարտութի մատնեցաւ։
*Այլ ոչևս իցեն պարծանք մովաբու 2
յեսեբօն. խորհեցաւ 'ի վերայ նորա
չարիս. եկա՛յք հարցուք զնա յազգէ' և
լռելով լռեսցէ. զկնի քո շրջեսցի հուր։
*Զի գոյժ գուժոյաց յորոնայիմայ. 3
սատակումն' և բեկումն մեծ։ *Բեկաւ 4
մովաբ։ գոյժ տուք 'ի սեգոր։ *Զի 5
լցաւ աղօթ լալօք։ ելցէ լալով ընդ ճա
նապարհն որոնայիմայ։ տագնապ' և
գոյժ բեկման լուայ։ *Փախերո՛ւք' և 6
ապրեցուցէք զանձինս. և եղիջիք իբ_
րև ցցիռ յանապատի։ *‖Քանզի յու 7
սացեալ էիր յամուրս քո. եկեսցեն նե
ղութիք. և դու ըմբռնեսցիս. և ելցէ
քամոս 'ի գերութի. քուրմք նր' և իշ
խանք նր միանգամայն։ *Հասցէ սա_ 8
տակումն 'ի վր ամ քաղաքաց. և մի քա
ղաք մի ապրեսցի. և կորիցէ բնակիչ'
և սատակեսցի դաշտական. այսպէս
ասէ Տր։ *Տուք նշանակ մովաբայ. զի 9
տոչորելով տոչորեսցի. և ամ քաղաքք
նորա յանապատ եղիցին առ 'ի չգոյէ
բնակչաց։ *Անիծեալ լիցի' որ գոր_ 10
ծիցէ զգործ Տն հեղգութբ. և անի_
ծեալ լիցի' որ վերացուսցէ զսուր իմ
յարենէ նորա։ *Հանգուցեալ էր 'ի 11

(margin: նաբաւոյ; խորհեցին; ‖Եր. 17.6.)

մանկութէ իւրմէ մովաբ. և յուսա_
ցեալ էր 'ի փառս իւր. և չէր թափեալ
յամանէ յամանոյ. և ոչ երթեալ 'ի գե
րութի. վն այնորիկ կայր համ նորա
'ի նմին. և հոտ նր ոչ պակասեցաւ։
12 *Վասն այնորիկ ահա աւուրք գան'
ասէ Տր. և առաքեցից 'ի նմա կորացու
ցիչս. և կորացուսցեն զնա. և զանօթս
նր մանրեսցեն. և զամանս նորա փշրես
13 ցեն։ *‖Այլ ամաչեսցէ մովաբ 'ի քա_
մոսայ. որպ ամաչեաց տունն իՂի 'ի բե
14 թելայ յուսոյ իւրոյ։ *Զիա՞րդ ասի_
ցէք, թէ ‖հզօրք եմք' և արք զօրաւ_
15 որք պատերազմի։ *Կորեաւ մովաբ'
և քաղաքք նորա. և ընտիր ընտիր երի
տասարդք նորա անկան 'ի սպանումն.
ասէ արքայ' որոյ Տր զօրութեց անուն
16 է նորա։ *Մերձ է 'ի հասանել օր մո_
վաբու. և չարիքն նր արագեն յոյժ։
17 *Խախտեցէ՛ք զնա շուրջանակի։ ամե_
նեքին ոյք գիտէք զանուն նր. ասացէ՛ք
զիա՞րդ խորտակեցաւ ցուպն գեղեցիկ'
18 գաւազանն մեծարանաց։ *Իջ 'ի փա
ռաց. և նիստ 'ի գիճի ետեղակալ
դուստր եդեբօնայ։ զի կորեաւ մո_
վաբ. և էհաս ապականիչ ամրոցաց
19 քոց։ *Կա՛ց յանցս ճանապարհաց. և
հայեա՛ց' որ նստիդ յարուէր. հա՛րց
ցփախստականս' և ասասջի՛ր. զի՞նչ
20 գործեցաւ։ *Յամօթ եղև մովաբ.
զի խորտակեցաւ. ճչեա՛ և աղաղակեա՛.
և գո՛յժ տուր յառնոն' (և 'ի քէնս) թէ
21 կորեաւ մովաբ։ *Այլ դատաստանք
հասեալ գան յերկիրն միսորայ. 'ի քի_
22 լօն. և յասայ. և 'ի մօփաթ։ *Այլ 'ի
դեբօն. և 'ի նաբաւ. և 'ի տունն դե_
23 ղաթամայ։ *Այլ 'ի կարիաթեմ. և 'ի
տունն գամողայ. և 'ի տունն մաւօնայ։
24 *Այլ 'ի կարիօթ. և 'ի բոսոր. և յամ
քաղաքս երկրիդ մովաբայ. 'ի հեռաւ
25 որս և 'ի մերձաւորս։ *Խորտակեցաւ
եղջիւրն մովաբու. և յանդգնութիւն
26 նր խորտակեցաւ' ասէ Տր։ *Արբե_
ցուցէք զնա, զի 'ի վր Տն մեծաբա_
նեաց. ծափս զծափի հարցէ մովաբ.
27 և եղիցի 'ի կատականս և ինքն։ *Զի
ո՞չ եթէ 'ի ծաղր ինչ էր քեզ իսրայէլ.
և ո՞չ 'ի գողօնս գտան' յորժամ մարտն_
չէիր ընդ նմա։ նովաւ դերեսցիս։
28 *Թողին զքաղաքս' և բնակեցան 'ի
քարածերպս բնակիչք մովաբայ. ե_
ղեն իբրև զաղաւնիս բունեալք 'ի քա
29 րածերպս 'ի բերանս սորոց։ *Լուա՛յ
զհպարտութի մովաբայ' զի հպարտա
ցաւ յոյժ. բարձրութի նր' և հպար_
տութի իւր' և ամբարտաւանութի. և
30 բարձրացաւ սիրտ նորա։ *Այլ ես ծա
նեայ զգործս նորա։ ո՞չ ապաքէն բստ

(margin: ‖3 Թագ. 12.29.; ‖Եսայ. 16. 6.; մխիթա_ րեցէք; դեբօնայ)

կարի նր իցեն բաղուկք նր. այլ նա ոչ այնպէս արար։ *Վասն այնորիկ ձէնս 31 բարձէք 'ի վր մովաբու. գուժեցէք յամ կողմանց մովաբու 'ի վր արանց խզելոց՝ փետտելոց՝ մրելոց։ *Որպէս մրմն 32 ջեսցէ իբրև զլալիւն յազերայ. լացցուք զքեզ այգիդ սաբեմայ. բարունակք քո ձկտեցան ընդ ծով. քաղաքք յազերայ հասին. 'ի վր մարգացց քոց, և 'ի վր կթոց քոց եհաս սատակումն։

Եսայ. 16. 10. *Մաշեցաւ ուրախութի և ցնծութի 33 'ի կարմեղայ՝ և յերկրէն մովաբացւոց. գինի էր 'ի հնձանս քո. ընդ առաւօտս ոչ կոխեցին. և ընդ երեկոյս ոչ հանին զձայնն ձայնահարաց։ *Յաղաղակէն 34 յեսեբոնայ մինչև ցյեղիայեղիայ. և մինչև յասաս. քաղաքք նց ետուն զձայնս իւրեանց. 'ի սեգորայ մինչև յորոնաիմ. և գոյժ 'ի սաղիսիայ. զի և ջուրքն նեմերիմայ 'ի տապ խորշակի եղիցի։

*Եւ կորուսից զմովաբ՝ ասէ Տէր՝ որ 35 ելանէր 'ի բագինս՝ և արկանէր խունկս աստուծոց օտարաց։ *Վասն այնորիկ 36 սիրտ իմ 'ի վերայ մովաբու իբրև ըզփող գոչեսցէ՝ սիրտ իմ 'ի վր արանց առ որմովք խզելոց իբրև զհնչիւն փողոյ. վս այնորիկ զորինչ ստացաւն կորեաւ 'ի մարդկանէ։ *Ամ գլուխք 37 ընդ ամ տեղիս գերծցին. և ամենայն մորուք խզեսցին. և ամենայն ձեռք կործեսցին. և ամ հաստկք քրձազգածք եղիցին։ *Եւ յամ տանիս մո- 38 վաբայ և 'ի հրապարակս նորա ամենեքին կոծ. զի խորտակեցից զմովաբ իբրև զաման՝ որ ոչ իմիք իցէ պիտանացու՝ ասէ Տր։ *Զիարդ փոփոխե- 39 ցաւ. ողբս առէք՝ զիարդ դարձոյց զթիկունս իւր. ամաչեաց՝ և եղև 'ի ծաղր ամենեցուն՝ որք շուրջ զնովաւ։
*Զի այսպէս ասէ Տր. ահաւասիկ 40 իբրև զարծուի դիմեսցէ. և տարածեսցէ զձեռս իւր 'ի վերայ մովաբու։
*Առաւ կարիօթ. և ըմբռնեցան ա- 41 մուրքն նր. և եղիցի սիրտ զօրաւորացն մովաբայ յաւուր յայնմիկ իբրև զսիրտ կանանց յերկունս։ *Եւ կորեաւ մո- 42 վաբ 'ի բազմութէ. զի 'ի վերայ Տն մեծաբանեաց։ *Վիհ՝ և ահ՝ և որո- 43 գայթ 'ի վերայ քո. որ բնակեալդ ես 'ի մովաբ։ *Որ փախիցէ յերեսաց 44 ահին. անկցի 'ի վիհն. և որ ելանիցէ 'ի վհէ անտի՝ ըմբռնեսցի յորոգայթն. զի ածից 'ի վերայ մովաբու զամն յորում հանդէս արարից նմա՝ ասէ Տր։
*'Ի յարկան եսեբոնայ հասին փախու- 45 ցեալք յորոգայթէն. զի հուր ել յեսեբոնայ՝ և բոց 'ի քաղաքէն սեհոնայ. և եկեր զիշխանս մովաբու. և քններ

Եսայ. 15. 2. Եզեկիէ. 7. 18.

Եսայ. 24. 18.

46 զօրդիսն սաօնայ։ *Վայ քեզ մովաբ՝ կորուսեր զժողովուրդն քամովսայ. զի առան ուստերք նորա՝ և դստերք 47 նորա 'ի գերութի։ *Եւ դարձուցից զգերութիւն յակօբու յաւուրս յետինս՝ ասէ Տր. մինչև ցայս վայր են դատաստանք մովաբու։

## ԳԼ. ԽԹ.

1 Ի վերայ որդւոցն ամոնայ. այսպէս ասէ Տր՝ մի թէ որդիք ոչ իցեն իլի. կամ՝ յանձանձիչս ո՞չ իցէ նորա՝ ընդէ՞ր ամփոփեաց մողոքոմ զգադ. և ժողովուրդ սոցա 'ի քաղաքս նոցա բնակի։
2 *Վասն այդորիկ ահա աւուրք գան՝ ասէ Տէր. և լուր արարից յռաբովթ որդւոցն ամոնայ զգոյժ քաղաքացն. և եղիցին յանապատ՝ և բագինք նր հրով այրեսցին. և առցէ իէլ զիշխանութի
3 իւր՝ ասէ Տր։ *Գուժեա՛ց եսեբոն՝ զի կորեաւ գէհ. բողո՛ք բարձէք դստերք հռաբայ. քրձազգածք եղերո՛ւք՝ և մոլեգարո՛ւք. սուգ առէք՝ և յայսկոյս յայնկոյս ընթացարո՛ւք զցանգովք. զի մողոքոմ 'ի գերութիւն երթիցէ. քուրմք նորա՝ և իշխանք 'ի միասին։
4 *Զի՞ ցնծացայց 'ի խորանս քո զեփ. և 'ի դաշտս քո դուստր ժպրհութե. որ յուսացեալ էիր 'ի գանձս քո՝ և ասէիր՝
5 ո՞վ դայցէ 'ի վերայ իմ։ *Ահաւասիկ ես ածից 'ի վերայ քո երկիւղ՝ ասէ Տր զօրութեց. յամ կողմանց շուրջ զքև բնակելոց. և ցրուեսջիք յիւրաքանչ իւր կողմն. և ոչո՛ք իցէ, որ ժողովես-
6 ցէ զթափառականսն։ *Եւ յետ այնորիկ դարձուցից զգերութի որդւոցն
7 ամոնայ՝ ասէ Տր։ *Ի վերայ եդոմայ այսպէս ասէ Տր զօրութեց. ոչ ևս գոյ իմաստութի 'ի թեման. կորեաւ խորհուրդ 'ի հանճարեղաց. գնաց իմաս-
8 տութի նորա։ *Խաբեցաւ տեղի նց՝ ծանրացուցէք 'ի նստիլ բնակիչք դադանայ. զի դժուարինս արար. ածի 'ի վերայ նորա ժամանակ՝ յորում այց
9 արարից նմա։ *Զի կթօղք հասին 'ի վերայ քո. և ո՛չ թողցեն 'ի քեզ մնացորդս՝ իբրև գողք գիշերոյ դիցեն զձեռս իւրեանց 'ի վերայ նոցա։
10 *Զի ես կործանեցի զեսաւ. յայտնեցի զծածուկս նորա. և թաքչել ոչ կարասցեն. կորեաւ զաւակ նորա 'ի ձեռանէ եղբօր և դրացւոյ իւրոյ։
11 *Եւ չիք մնալ որբոյն քում, թէ կեցցէ. և այրիք նոցա յիս յուսասցին։
12 *Զի այսպէս ասէ Տր՝ ահա որոց ոչ էր օրէն ըմպել զբաժակն՝ արբին. ըմպես և դու՝ արդարանալո՞վ արդարանայցես. ոչ արդարասցիս, այլ ըմպե-

լով

լով արգելս: 13 *Զի յանձն իմ երդուե_
այ՝ ասէ Տր. թէ յապականութի՝ և
'ի նախատինս՝ և յանէծս եղիցին 'ի
մէջ բաժնի նորա՝ և ամ քաղաքք նր
եղիցին աւերակք յաւիտենից:
Աբդի. 1. 1. 14 *Լուր լուայ 'ի Տէ և հրեշտակս յազգս
առաքեաց. ժողովեցարուք՝ և հասէք
'ի վերայ նորա. արիք՝ և ելէք 'ի պատե
րազմ: 15 *Զի ահաւադիկ ես փոքրիկս
ետու զքեզ 'ի մէջ ազգաց. արհա_
մարհեալ 'ի մէջ մարդկան: 16 *Այպա
նութի քո հասոյց քեզ զայդ. լրբութի
սրտի քոյ արար զքեզ ծակամուտ վի_
մաց. և էառ զզօրութի բարձրացեալ
Աբդի. 1. 4. բլրոյն քոյ. զի եթէ բարձրացուս_
ցես որպ արծուի զբոյն քո. և անտի իջու_
ցից զքեզ՝ ասէ Տր: 17 *Եւ եղիցի եդոմ
յանապատ. և ամ որ անցանիցէ ընդ
նա՝ զարմասցի. և շչեսցէ 'ի վերայ ամ
Ծննդ. 19. 24. հարուածոց նր: 18 *Որպէս կործանե_
ցաւ սոդոմ և գոմոր և բնակիչք նորա՝
ասէ Տր. և մի նստցի 'ի նմա մարդ. և
մի բնակեսցի 'ի նմա որդի մարդոյ:
19 *Ահաւադիկ իբրև զառիւծ ելցէ 'ի
[illegible] միջոյ յորդանանու 'ի տեղին եթովմայ՝
[illegible] զի վաղվաղակի հալածականս արարից
[illegible] զնոսա 'ի նմանէ. և ով է ընտրեալ 'ի
[illegible] նմա. և այց արարից նմա՝ կամ ով
Յոբ. 41. 1. ընդդէմ դառնայցէ ինձ. և կամ ով
իցէ այն հովիւ. որ ընդդէմ կացցէ ե_
րեսաց իմոց: 20 *Վն այդորիկ լուարուք
զխորհուրդ Տն՝ զոր խորհեցաւ 'ի վր
եդովմայեցւոց. և զխորհուրդն նորա՝ զոր
խորհեցաւ 'ի վերայ բնակչաց թեման_
նայ. և ոչ հարցին յետինք ոչխարաց.
բայց եթէ յաւեր կայցեն քանդուածն
նոցա: 21 *Ի ձայնէ կործանման նց շար
ժեցաւ երկիր. գոյժ քո էհաս 'ի ծով
կարմիր. և լսելի եղև աղաղակ քո:
22 *Ահաւանիկ իբրև զարծուի վերա_
ցի՝ և սլասցի՝ և տարածեսցէ զթևս
իւր 'ի վերայ բոսրանայ. և եղիցի սիրտ
զօրաւորացն եդովմայ յաւուր յայնմիկ
իբրև զսիրտ կանանց յերկունս:
23 *Ի վերայ Դամասկոսի: Յամօթ եղև
եմաթ՝ և արփաթ. զի լուր չարեաց
լուան. յիմարեցան 'ի ծովուն. զայրա
ցան՝ և հանդչիլ ոչ կարասցեն:
24 *Լքաւ դամասկոս. դարձաւ 'ի փա_
խուստ, և կործանեցաւ. դողումն կա_
լաւ զնա, և երկունք ձեպեցին զնա
իբրև զծննդականի: 25 *Եւ զիա՛րդ էր.
զի ոչ թողոյր զքաղաքն իմ. զաւանն՝
զոր սիրեցին: 26 *Վասն այնորիկ անկ_
ցին երիտասարդք 'ի հրապարակս քո.
և ամ արք պատերազմօղք կործանես_
ցին յաւուր յայնմիկ՝ ասէ Տր զօրու_
թեց: 27 *Եւ վառեցից հուր 'ի պարիսպն

Ձբ 2

դամասկոսի. և կերիցէ զհրապարակս
28 որդւոյն ադերայ: *Ի վերայ Կեդարու:
Ի վերայ տիկնոջ հանգրուանին՝ զոր
էհար նաբուգոդոնոսոր արքայ բաբե
լացւոց՝ այսպ ասէ Տր. արիք, ելէք 'ի
վր կեդարու. և հարէք զորդիսն կե_
29 դամայ: *Զխորանս նոցա՝ զխաշինս
նոցա. առցեն զհանդերձս նց, և զամ
զկահ և զկարասի նց. և զուղտերա_
մակս նց առցեն իւրեանց. և կոչեցէք
'ի վերայ նոցա կորուստ շուրջանակի:
30 *Փախերուք սաստիկ. խորեցէք 'ի նըս
տիլ բնակիչք հանգրուանիդ՝ ասէ Տր.
զի խորհուրդ խորհեցաւ 'ի վերայ ձեր
նաբուգոդոնոսոր արքայ բաբիլաց_
ւոց. խորհեցաւ 'ի վր քո խորհուրդ:
31 *Արի, ել 'ի վերայ ազգին դադարե_
լոյ. որ նստի 'ի հանգստեան՝ ասէ Տր.
որոց ոչ դրունք, և ոչ նիգք, առան_
32 ձինն բնակեալք: *Եւ եղիցին ուղտե
րամակք նոցա յաւար. և բազմութի
խաշանց նոցա 'ի կորուստ. և հոսեցից
ընդ ամ հողմս զյապաւեալսն առ ե_
րեսօք. և յամ կողմանց նոցա ածից
33 նց կործանումն՝ ասէ Տր: *Եւ եղի_
ցի հանգրուանն բնակութի ջայլա_
մանց. և անապատ մինչև յաւիտեան:
և մի բնակեսցի 'ի նմա մարդ. և մի
34 նստցի 'ի նմա որդի հողածնի: *Բանն
Տն՝ որ եղև առ երեմիայ մարգարէ վն
եղամայ 'ի սկզբան թագաւորութեն
սեդեկիայ արքայի յուդայ՝ և ասէ:
35 *Այսպ ասէ Տր զօրութեց. ահաւա
դիկ խորտակեցաւ աղեղնն եղամայ.
զիշխանութի բռնաւորութե նր առից:
36 *Եւ ածից 'ի վր եղամայ չորս հողմս
'ի չորից կողմանց երկնից, և ցրուեցից
զնս ընդ ամ հողմս ընդ այնոսիկ. և
ոչ իցէ ազգ, յոր ոչ հասանիցեն թա_
37 փառականքն եղամայ: *Եւ զարհու_
րեցուցից զնոսա առաջի թշնամեաց
նց, որք խնդրէին զանձինս նոցա. և
ածից 'ի վերայ նոցա ըստ բարկութե
սրտմտութե իմոյ՝ ասէ Տր. և արձա_
կեցից զսուր իմ զկնի նոցա մինչև սպա_
38 ռեսցէ զնոսա: *Արկից զաթոռ իմ
յեղամ. և կորուսից անտի զթագա_
39 ւորս՝ և զմեծամեծս՝ ասէ Տր: *Եւ
եղիցի յաւուրս յետինս դարձուցից
զգերութիւն եղամայ՝ ասէ Տր ('ի սկզ
բան թագաւորութեն սեդեկիայ ար
քայի եղև բանս այս 'ի վր եղամայ:)

Ի վերայ Բաբելացւոց:

## ԳԼ: Ծ:

1 Բանն՝ զոր խօսեցաւ Տր 'ի վր բա_
բելոնի. առ երկիրն քաղդէացւոց
2 'ի ձեռն երեմիայ մարգարէի: *Պատ_

Kkkkk 2 մե_

մեցէք յազգս՝ և լուր արարէք՝ նշանա-
կեցէք՝ լսելի արարէք․ մի՛ ծածկիցէք՝
ասասջի՛ք, առաւ բաբիլոն․ յամօթ ե-
ղև բէլ․ փափուկքն աներկիւղք․ մատ
նեցաւ մերոդաք․ յամօթ եղեն կուռք
նր․ ամաչեցին գարշելիք նր։ *Զի ել 3
'ի վերայ նր ազգ 'ի հիւսիսոյ․ նա դիցէ
զերկիր նորա յապականութի․ և ոչ ոք
իցէ, որ բնակիցէ 'ի նմա 'ի մարդոյ մին
չև յանասուն․ զի խախտեցան՝ և գնա
ցին։ *Յաւուրս յայնոսիկ․ և 'ի ժա- 4
մանակի յայնմիկ ասէ Տր̄՝ եկեսցեն որ
դիքն իղի․ ինքեանք և որդիքն յուդայ
'ի միասին շրջեսցին․ և լալով գայցեն
առ Տր̄ Ա̄ծ իւրեանց՝ և խնդրեսցեն։
*Մինչև 'ի սիոն հարցցեն զճանապար 5
հն․ այսր դիմեսցեն, և եկեսցեն՝ և ա-
պաւինեսցին 'ի Տր̄՝ զի ուխտ յաւիտե-
նից է՝ և ոչ մոռասցի։ *Իբրև զոչխարս 6
կորուսեալս եղև ժողովուրդ իմ․ հո-
վիւք նոցա մերժեցին զնոսա, 'ի վր̄ լե
րանց մոլորեցուցին զնոսա, 'ի լեռնէ 'ի
բլուր գնացին․ մոռացան զմակաղա-
տեղս իւրեանց։ *Ամենեքին որք գտա 7
նէին՝ սատակէին զնս̄․ թշնամիք նոցա
ասացին՝ մի՛ ներեսցուք նց․ փոխանակ
զի մեղան Տն̄ արօտ արդարութե է․
և Տն̄ որ ժողովեաց զհարս նոցա։
*Ստարացարո՛ւք 'ի միջոյ բաբիլոնի․ 8
և յերկրէ քաղդէացւոց ելէք՝ և եղե-
րո՛ւք իբրև նոխազս առաջի խաշանց։ Այծս
*Ահաւասիկ ես յարուցից՝ և ածից 'ի 9
վր̄ բաբիլացւոց զժողովս ազգաց մե-
ծամեծաց յերկրէ հիւսիսոյ․ և ճակա-
տեսցին զնովաւ․ և անտի ըմբռնեսցի
իբրև նետ իմաստուն պատերազմողի,
որ ոչ դարձցի ունայն։ *Եւ եղիցի եր 10
կիրն քաղդէացւոց յաւար․ և ա̄մ աւար
առուքն նր̄ յագեսցին՝ ասէ Տր̄․ զի
ուրախ լինէիք՝ և պարծէիք յափշտա-
կեալ զժառանգութի իմ։ *Զի խայ- 11
տայիք իբրև զզուարակս 'ի վր̄ դա-
լարւոյ․ և ոգորէիք իբրև զցուլս։
*Յամօթ եղև մայրն ձեր յոյժ․ մայրն 12
որ 'ի բարութե էր՝ ահաւադիկ վախ-
ճան ազգաց՝ աւեր՝ անջուր՝ և անա-
պատ։ *Ի բարկութէ Տն̄ մի՛ բնակես 13
ցի, այլ եղիցի յապականութի առհա
սարակ․ և ա̄մ որ անցանիցէ ընդ բա-
բիլոն, տրտմեսցի․ և շշեսցէ 'ի վր̄ ա̄մ
հարուածոց նր̄։ *Ճակատեցարո՛ւք 14
շուրջ զբաբիլոնիւ ա̄մ աղեղնաւորք․
ձիգ դի՛ք 'ի նմա՝ և մի՛ խնայէք 'ի նետս
ձեր՝ զի Տն̄ մեղաւ։ *Խրախոյս բար- 15
ձէք շուրջ զնովաւ․ զի լքան ձեռք իւր․
անկան մահարձանք՝ և կործանեցան
պարիսպք նր՝ զի վրէժխնդրութի է
յԱ̄յ․ խնդրեցէ՛ք զվրէժ 'ի դմանէ․

16 ո՛պ արարն, արարէ՛ք դմա։ *Սատակե
ցէ՛ք զզաւակ 'ի բաբիլոնէ․ որ առնու
ցու մանգաղ 'ի ժամանակի հնձոց․ յե
րեսաց յունական սրոյն իւրաքանչիւր
'ի ժողովուրդ իւր դարձցի․ և իւրա-
17 քանչիւր յերկիր իւր փախիցէ։ *Ոչ-
խար մոլորեալ իէղ․ առիւծք մերժե
ցին զնա․ նախ եկեր զնա թագաւորն
ասորեստանեայց․ և յետոյ զոսկերս նր
18 արքայն բաբիլացւոց։ *Վա̄ յնորիկ
այսպէս ասէ Տր̄ զօրութեց Ա̄ծ իղի․
ահաւասիկ ես խնդրեցից զվրէժ յար
քայէն բաբիլացւոց՝ և յերկրէ նր․ ո՛պ
խնդրեցի զվրէժ յարքայէն ասորես-
19 տանեայց։ *Եւ պատսպարեցուցից
զիէղ անդրէն 'ի ճարակս իւր․ և արա-
ծեսցի 'ի կարմեղոս․ և 'ի բասան․ և 'ի
լերինն եփրեմի․ և 'ի գաղաադ․ և յա-
20 գեսցին անձինք նց։ *Յաւուրսն յայ-
նոսիկ․ և 'ի ժամանակի յայնմիկ՝ ասէ
Տր̄՝ խնդրեսցեն զանիրաւութի իղի՝
և ոչ ևս իցէ․ և զմեղս յուդայ՝ և ոչ
գտանիցին․ զի քաւիչ եղէց անիրաւու
21 թեց նոցա։ *Ի վերայ երկրի էլ դառ-
նութե՝ 'ի վր̄ բլրոց, և 'ի բնակչաց նր
խնդրեցից վրէժս․ սուր՝ և ապականու
թի զկնի նոցա՝ ասէ Տր̄․ և որպէս
ըստ ա̄մի՝ զոր պատուիրեցի քեզ։
22 * Ձայն պատերազմի յերկրէն քաղ
23 դէացւոց․ և բեկումն մեծ։ *Զիարդ
խորտակեցաւ, և մանրեցաւ սիւնն ա̄մ
երկրի․ զիա՞րդ եղև բաբիլոն յապա-
24 կանութի 'ի մէջ ազգաց։ *Յարձա-
կեսցին 'ի վր̄ քո․ և ըմբռնեսցիս բա-
բիլոն՝ և ոչ իմասցիս․ գտար, և ըմբռ
նեցար․ զի Տն̄ ընդդէմ դարձար։
25 *Եբաց Տր̄ զգանձս իւր․ և էհան զանօթս
բարկութե իւրոյ․ զի գործ Տն̄ զօրու-
26 թեց է յերկրին քաղդէացւոց։ *Եկին
հասին նմա ժամանակք իւր․ բացէք
զշտեմարանս նորա․ որոնեցէք զնա իբ
րև զայրս․ և սատակեցէք զնա․ մի՛ մնա
27 ցեն նր մնացորդք։ *Յամաքեցուցէք
զա̄մ պտուղս նորա՝ և իջցեն 'ի սպա-
նումն․ վա՜յ նց՝ զի եկն օր նոցա՝ և ժա
28 մանակ վրէժխնդրութե նց։ *Ձայն
փախուցելոց՝ և ապրեցելոց յերկրէն
բաբիլացւոց՝ պատմել 'ի սիոն զվրէժ
խնդրութին 'ի Տ̄է մերմէ․ զվրէժխնդ
29 րութի տաճարի իւրոյ։ *Պատուէր
տուք բազմաց 'ի վր̄ բաբիլոնի ա̄մ
աղեղնաւորաց․ թէ բանակեցարո՛ւք ըզ
դովաւ շուրջանակի․ զի մի՛ ոք իցէ՝ որ
ապրիցի 'ի դմանէ․ հատուցէք դմա ը̄ս
գործոց իւրոց․ ըստ ա̄մի՝ զոր արար,
արարէ՛ք դմա․ զի Տն̄ ընդդէմ դար-
30 ձաւ․ Ա̄յ սրբոյն իղի։ *Վա̄ յնորիկ
անկցին երիտասարդք նորա 'ի հրապա
րակս

բակս նր ․ և ամ արք պատերազմողք
նր անկեալք դնիցին յաւուր յայնմիկ․
ասէ Տր ։ *Ահաւասիկ ես ՚ի վերայ քո՝ 31
ասէ Տր զօրութեանց ՚ի մտ հպարտիդ․ զի
հասեալ է օր քո՝ և ժամանակ վրէժ_
խնդրութեան քոյ ։ *Եւ տկարասցի հպար 32
տութիւն քո․ և կործանեսցի․ և ոչ ոք իցէ՝
որ յարուցանիցէ զնա ․ և վառեցից
զհուր յանտառս նր․ և կերիցէ շուրջ
զնովաւ ։ *Այսպէս ասէ Տր զօրութեանց․ 33
բռնադատեցան որդիքն իէլի՝ և որ_
դիքն յուդայ․ ամենեքին որք գերեցին
զնոսա՝ բռնաբարեցին զնս․ և ոչ կա_
մէին արձակել զնոսա ։ *Եւ որ փրկէ 34
զնոսա հզօրն․ Տր ամենակալ անուն է
նր ։ դատեսցի դատաստան ընդ ոսոխս
իւր․ զի բարձցէ զերկիրն․ և զայրաս_
ցի բնակչացն բաբելոնի ։ *Սուր ՚ի մտ 35
քաղդէացւոցն՝ ասէ Տր․ և ՚ի վերայ
բնակչացն բաբելոնի․ և ՚ի մտ մեծամե
ծաց նր, և ՚ի մտ խորհրդականաց նր ։
*Սուր ՚ի մտ ըղձութեանց նորա․ և բարձ 36
ցին․ սուր ՚ի մտ պատերազմողաց նր՝
և լքցին ։ *Սուր ՚ի մտ երիվարաց՝ և 37
կառաց նր․ սուր ՚ի մտ նահատակաց նր․
և ՚ի մտ ամ խառնիճաղանճիցն որ ՚ի
մէջ նր․ և եղիցին իբրև զկանայս ։ սուր
՚ի մտ գանձուց նր՝ և յափշտակեսցին ։
*Սուր ՚ի մտ ջուրց նր․ և ամաչեսցեն․ 38
զի երկիր դրօշելոց է․ և ՚ի մտ կղզեացն
ուրովք պարծէին ։ *Վասն այնորիկ 39
ճիճաղք բնակեսցին ՚ի կղզիսն ․ և
բնակեսցին ՚ի նմա դստերք հաւկար_
ոճաց․ և մի ևս շինեսցի խոպան․ և մի
ևս բնակեսցի յաւիտեան ։ *‖ Որպէս սա 40
տակեաց Ած զերկիրն սոդոմայեցւոց՝ և
զգոմորայեցւոց՝ և զսահմանակիցս նր՝
ասէ Տր․ և մի բնակեսցի անդ մարդ ․
և մի պանդխտեսցի ՚ի նմա որդի մար_
դոյ ։ *Ահաւասիկ ժողովուրդ գայ ՚ի հիւսի 41
սոյ՝ և ազգ մեծ․ և թագաւորք բա_
զումք զարթիցեն ՚ի ծագաց երկրի ։
*Աղեղն վաղակաւոր ՚ի ձեռին իւր_ 42
ում, ժպիրհ է․ և մի ողորմեսցի ։ ձայն
նց իբրև զծով գոչեսցէ․ հեծեալք յե
րիվարս․ պատրաստեալք իբրև զհուր
՚ի պատերազմի ՚ի վերայ քո դուստր բա
բիլացւոց ։ *Լուաւ զլուր նց արքայն 43
բաբիլացւոց՝ և լքան ձեռք նր․ նեղու_
թիւն տագնապեաց զնա․ երկունք իբրև
ծննդականի ։ *Ահաւադիկ իբրև զա 44
ռիւծ ելցէ ՚ի յորձանացն յորդանանու
՚ի տեղին եթամայ․ զի երագ երագ հա
լածեցից զնս ՚ի նմանէ․ և զամ երիտա
սարդս յարուցից ՚ի վերայ նր ։ զի ո՞վ ոք
է իբրև զիս․ և ո՞վ ընդդէմ դառնայ_
ցէ ինձ․ ‖ և ո՞վ ոք հովիւ կայցէ հակա_
ռակ ։ *Վասն այսորիկ լուարուք զխոր_ 45
հուրդ Տն զոր խորհեցաւ ՚ի մտ բաբե
լոնի․ և զխորհուրդս նր զոր խորհեցաւ
՚ի մտ բնակչաց քաղդէացւոց․ եթէ ոչ
ապականիցէք զգառինս հօտից նոցա ․
եթէ ոչ ապականիցին ՚ի նոցանէ ա_
րօտք ։ 46 *Ի ՚ի ձայնէ կործանման բա
բիլոնի շարժեսցի երկիր․ և գոյժ նո_
րա լուիցի ՚ի հեթանոսս ։

‖ Ծննդ․ 19.24.

‖ Յոբ 41. 1.

## ԳԼ ։ ԾԱ ․

1 Այսպէս ասէ Տր ․ ահաւասիկ ես
յարուցից ՚ի մտ բաբելոնի՝ և ՚ի
վերայ բնակչաց նորա զխիստ յարուցե
լոց․ և հողմ խորշակի սաստկի ։
2 *Եւ առաքեցից ՚ի բաբելոն գործելիս
և գործեսցեն զնա՝ և ապականեսցեն
զերկիր նր․ զի վայ ՚ի վերայ բաբելոնի
շուրջանակի յաւուր չարչարանաց իւր
3 ոյ ։ *Լարեսցէ՝ որ լարելոցն իցէ զա_
ղեղն իւր ։ և առցէ զանձամբ՝ ոյր իցէ
զէն ․ մի խնայէք յերիտասարդս նորա ․
և ապականեցէք զամ զօրութիւն նորա ։
4 *Եւ անկցին վիրաւորք յերկրին քաղ_
դէացւոց ․ և խոցոտեալք շուրջ զնո_
5 վաւ ։ *Զի ոչ եղև այրի իէլ և յուդայ
յԱյ իւրեանց, և ՚ի Տէ ամենակալէ․
զի երկիր նց լցաւ անօրէնութեամբ ՚ի սր_
6 բութեանց իէլի ։ *Փախերո՛ւք ՚ի միջոյ
բաբելոնի․ և ապրեցուսցէ իւրաքանչ
իւր զանձն իւր․ և մի կործանիցիք յա_
նիրաւութեան նր ․ զի ժամանակ վրէժ
խնդրութեան նր ՚ի Տէ․ զհատուցումն նր
7 ինքն հատուսցէ ։ *Բաժակ ոսկի բա
բիլոն ՚ի ձեռին Տն ․ որ արբուցանէ
զամ երկիր ՚ի գինւոյ իւրմէ ․ արբին
հեթանոսք, վասն այնորիկ շարժեցան
8 ազգք ։ *‖ Եւ յանկարծակի կործանե
ցաւ բաբելոն, և խորտակեցաւ․ ո՛ղբս
առէք ՚ի վերայ դորա․ առէք դեղ վի
րաց դորա ․ թերևս բժշկեսցի ։
9 *Բժշկեցաք զբաբելոն․ և նա ո՛չ բժշ
կեցաւ ․ թողցո՛ւք զնա՝ և գնասցո՛ւք
իւրաքանչիւր յերկիր իւր․ զի մերձե_
ցան մինչև յերկինս դատաստանք նր․
10 ամբարձան մինչև յաստեղս ։ *Եւ
եհան Տր զդատաստան ՚ի վերայ նորա․
եկա՛յք՝ և պատմեսցո՛ւք ՚ի սիոն զգործս
11 Տն Այ մերոյ ։ *Կազմեցէ՛ք աղեղունս․
լցէ՛ք զկապարճս․ զի զարթոյց Տր զո_
գի թագաւորին մարաց․ զի բարկութի
նորա ՚ի վերայ բաբելոնի ․ և ջնջեսցէ
զնա․ զի վրէժխնդրութիւն Տն է՝ վրէժ
12 խնդրութի տաճարի նր ։ *՚Ի մտ պարս
պաց բաբելոնի կանգնեցէ՛ք նշանս ․
կացուցէ՛ք պահապանս ․ զարթուցէ՛ք
զառաջապահս․ պատրաստեցէ՛ք զզէնս․
զի ձեռն ՚ի գործ արար․ և արասցէ Տր՝
զոր ինչ խօսեցաւ ՚ի վերայ բնակչացն

‖ Եսայ․ 21. 9. Յայտ․ 14.8.

բա_

բաբելոնի։ *Բնակելովք առ ջուրբքն 13 բազմօք. և 'ի վր̅ բազմութե գանձու նր. հասեալէ վախճան քո. արդար և սոսդ 'ի փոր քո եմուտ։ *‖Զի երդ_ 14 ուաւ Տր զօրութեց 'ի բազուկ իւր. թէ լցից զքեզ զօրօք իբրև մարախու. և բարբառեսցին 'ի վր̅ քո՝ որք իջանեն 'ի քեզ։ *‖Որ արար զերկիրն զօրութբ 15 իւրով. պատրաստեաց զտիեզերս իմաստութբ իւրով. ձգեաց զերկինս հան_ճարաւ իւրով։ *Ընդ 'ի բարբառ զբազ 16 մութն ջուրց շառաչմանց յերկինս. և հանէ զամպս 'ի ծագաց երկրի. և զփայլատակունս յանձրևս արարեհան զլոյս 'ի շտեմարանաց իւրոց։ *Յիմարեցաւ 17 ամ մարդ 'ի գիտութէ. յամօթ եղև ամ ոսկերիչ 'ի դրօշելոց իւրոց. զի սուտ ձուլեցին. չիք ոգի 'ի նոսա։ *Սնոտիք 18 են գործք՝ և ծաղանաց արժանիք. 'ի ժամանակի այցելութե իւրեանց կորիցեն։ *Ոչ այնպ իցէ բաժինն յակոբայ. 19 զի որ ստեղծն զամ, նա է բաժին նր. Տր զօրութեց անուն նր։ *Ցրուեսցես 20 դու ինձ զանօթս պատերազմի. և ցրուեցից ես 'ի քեզ զազգս. և բարձից 'ի միջոյ քումմէ զթագաւորս։ *Եւ 21 ցրուեցից ես 'ի քեզ զայրուձի նորա. և ցրուեցից 'ի վր̅ քո զկառս և զհեծեալս նորա։ *Եւ ցրուեցից 'ի քեզ զայր և 22 զկին. և ցրուեցից 'ի քեզ զծերն և զե_րիտասարդն. և ցրուեցից 'ի քեզ զըն_տիրն և զկոյսն։ *Եւ ցրուեցից 'ի քեզ 23 զհովիւ և զհօտ իւր. և ցրուեցից 'ի քեզ զհողագործն. և զհողագործութիւն իւր. և ցրուեցից 'ի քեզ զզօրավարս և զզօրագլուխս քո։ *Եւ հատուցից բա 24 բելոնի՝ և բնակչացն քաղդէացւոց զամ չարեաց՝ զոր արարին ընդ սիոն առաջի աչաց ձերոց՝ ասէ Տր։

*Ահաւադիկ ես 'ի վերայ քո լեառն 25 ապականիչ՝ ասէ Տր՝ որ ապականէիր զամ երկիր. և ձգեցից զձեռն իմ 'ի վր̅ քո. և թաւալեցուցից զքեզ 'ի վիմացդ. և տաց զքեզ 'ի լեառն այրեցեալ։

*Եւ ոչ և առնուցուն 'ի քէն վէմ ան 26 կեան՝ և վէմ հիման. զի յապականութն յաւիտենից եղիցիս՝ ասէ Տէր։

*Առէք զնշան 'ի վր̅ երկրիդ. փող հա 27 րէք ընդ ազգս ամ, հրաւիրեցէք 'ի վր̅ դորա զունդս. պատուէր տուք յինէն արարատեան թագաւորութեցն և աքանազեան գնդին. կանգնեցէք զնովաւ նետակալս. ելէք 'ի վր̅. շարժե_ցաւ՝ և չարչարեցաւ. զի եկն էհաս 'ի վր̅ բաբելոնի խորհուրդ Տն. երիվարք իբրև բազմութի մարախոյ։ *Հրաւի 28 րեցէք 'ի վր̅ նր ազգս՝ և զթագաւորն մարաց. զզօրավարս նր, և զամ զօրա_գլուխս նց անդր. և զամ երկրի զիշխա

29 նութիս։ *Դնել զերկիրն բաբելացւոց յապականութի. զի մի լինիցի 'ի

30 նմա բնակութի։ *Լքանիցեն նահա_տակք բաբելոնի 'ի պատերազմէ. նստցին 'ի պաշարման. բեկաւ զօրութի նց. և եղեն իբրև զկանայս. հրձիգք եղեն յարկք նց. խորտակեցան նիգք նորա։

31 *Փախստեայ փախստէի պատահեսցի՝ և գուժկան գուժկանի դիպեսցի. գոյժ առնել թագաւորին բաբելաց_ւոց. եթէ առաւ քաղաքն նր 'ի ծագաց

32 ելից իւրոց։ *Իմբռնեցան, և ժողովք նց 'ի հուր այրեցան. և արք պատերազ

33 մօղք 'ի դրունս դիմեցին։ *Զի այսպ ասէ Տր զօրութեց՝ Ած իղի. տուն բաբիլացւոց իբրև զօրան վականակ կասցի. սակաւիկ մևսևս՝ և հասցեն հունձք

34 նորա։ *Եկեր զիս՝ էհաս 'ի վերայ իմ. բաժանեաց զիս նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց. կացոյց զիս իբրև աման մի ունայն. եկուլ զիս իբրև զվիշապ. ելից զկուշտ իւր 'ի փափկութէ իմմէ. մերժեցան վաստակք իմ։

35 *Եւ տառապանք իմ 'ի բաբելոն դնացին՝ ասասցէ բնակիչն սիոնի. և արիւն իմ՝ 'ի վերայ բնակչացն քաղդէացւոց.

36 ասասցէ եէմ։ *Վասն այդորիկ այսպ ասէ Տր՝ ահաւադիկ ես դատեցայց զըտոխն քո. և խնդրեցից զվրէժ քո. և աւարեցից զծովն նր. և ցամաքեցուցից

37 զաղբիւր նորա։ *Եւ եղիցի բաբելոն 'ի բլուրս՝ բնակութի վիշապաց՝ յապականութի և 'ի շչիւն. և մի բնակեսցի։

38 *Համօրէն իբրև առիւծունք պատ_րաստեցան որդիք նց. և իբրև զկորիւն

39 առիւծուց։ *Ի ջերմ խշտեաց իւրեանց տաց նոցա արհաւիրս. և արբեցուցից զնս. զի թմբրեսցին. և ննջեսցեն քուն յաւիտենից՝ և մի զարթիցեն՝ ասէ Տր

40 *Իջո զնս իբրև զոչխարս 'ի սպանումն. և իբրև զխոյս այծեօք համդերձ։

41 *Զիարդ 'ի պարտութի մատնեցար սիսակ. և անկար յորս պարծանքդ ամ երկրի. զիարդ եղև բաբելոն յա_պականութի 'ի մէջ ամ ազգաց։

42 *Ել 'ի վերայ բաբելոնի ծովն դոչ_մամբ ալեաց իւրոց. և ծածկեցաւ։

43 *Եղեն քաղաքք նորա յապականութի յերկիր անջուր և յանապատ. և մի ոք իցէ՝ որ բնակիցի 'ի նմա. և ոչ հանգի

44 ցէ 'ի նմա որդի մարդոյ։ *Եւ խնդրեցից զվրէժ 'ի բելայ 'ի բաբելոն. և հանից՝ զոր եկուլն 'ի բերանոյ նորա. և մի ևս ժողովեսցին առ նա ազգք. նաև պարիսպքն բաբելացւոց անկան։

45 *Ելէք 'ի միջոյ նր ժողովուրդ իմ. և ապրեցուցէք իւրաքանչիւր զանձինս ձեր

‖ Աբդ. 6. 8.

‖ Ծննդ. 1. 1.

ձեր 'ի սրտմտութենէ բարկութեան Տն։
*Մի՛ երբեք զանգիտիցեն սիրտք ձեր. 46
և մի՛ երկնչիք 'ի համբաւուց՝ զոր լսիցէք
յերկրին. զի 'ի նմին տարւոջ մտցէ
լուրն. և յետ այնր տարւոյ այլ լուր.
և անիրաւութիւն յերկրին. առակ 'ի վր
առակի։ *Վս այնորիկ ահա աւուրք 47
գան՝ ասէ Տր. և արարից հանդէս 'ի
վերայ դրօշելոցն բաբելացւոց. և ամ
երկիր նր ամաչեսցէ. և ամ վիրաւորք
նր անկցին 'ի մէջ նորա։ *Եւ ցնծաս- 48
ցեն 'ի վերայ բաբելոնի երկինք՝ և եր-
կիր. և ամ որ 'ի նոսա. զի 'ի հիւսիսոյ
եկեսցեն թշնամառացուցիչք նորա՝ ասէ
Տր։ *Եւ 'ի բաբելօն անկցին վիրա- 49
ւորք ամ երկրին։ *Ելէք ապրեալք 50
յերկրէդ. մի՛ կայք՝ յիշեցէ՛ք զՏր հե-
ռաւորքդ. և Երմ անկցի 'ի սիրտս ձեր։
*Յամօթ եղեաք՝ զի լուաք զնախա- 51
տինս մեր. ծածկեցին անարգանք զե-
րեսս մեր. մտին այլազգիք 'ի սրբութիս
մեր 'ի տուն Տն։ *Վսն այդորիկ ահա 52
աւուրք գան՝ ասէ Տէր՝ և խնդրեցից
զվրէժ 'ի դրօշելոց նորա. և յամ երկ-
րի անկցին վիրաւորք։ *Եւ եթէ 53
բարձրասցի բաբելօն իբրև զերկինս.
և եթէ բարձրացուսցէ զբարձրութիւն
զօրութեան իւրոյ. յինէն եկեսցեն նմա
սատակիչք՝ ասէ Տր։ *Ձայն գուժի 54
'ի բաբելօն. և բեկումն մեծ յերկրին
քաղդէացւոց։ *Զի սատակեաց Տր 55
զբաբելօն՝ և կորոյս 'ի նմանէն զձայն
մեծ՝ զգոչիւն ալեաց իւրոց. իբրև
ջուրք բազումք եւուն զբարբառ սա-
տակման նորա։ *Զի եկն 'ի վր բաբե- 56
լօնի թշնամութիւն. ըմբռնեցան սպա-
ռազէքն նր. զարհուրեցան աղեղնաւ-
որք նր. զի Այ հատուցիչ է. ինքն Տր
հատուցանէ նմա զհատուցումն։ *Եւ 57
արբեցուսցէ արբեցութբ զզօրավարս
նր. և զիմաստունս նր՝ և զիշխանս նր՝
և զզօրագլուխս նորա՝ և զզօրաւորս
և ննջեսցեն զքուն յաւիտենից. և մի՛
զարթիցեն. ասէ արքայ՝ Տր զօրութեց
անուն է նր։ *Այսպէս ասէ Տր զօրու- 58
թեց. պարիսպն բաբելօնի լայնեցաւ.
կործանելով կործանեսցի. և դրունք
նր բարձունք հրով այրեսցին. և ջա-
նասցին ժողովուրդք ընդունայն. և
ազգք 'ի սկզբան կատակեսցին։ *Բանն 59
զոր պատուիրեաց Տր երեմիայի մար-
գարէի ասել ցսարեայ որդի ներեայ՝
որդւոյ մաասայ. յորժամ երթայր
ընդ սեդեկիայ արքայի յուդայ 'ի բա-
բիլօն. յամին չորրորդի թագաւորութե
նր. և սարեայ էր պարգև ապետ նորա։
*Եւ գրեաց երեմիա զամ չարիս՝ որք 60
գալոց էին 'ի վերայ բաբելօնի. 'ի մա-

էր պետ մարգարէութե

տեանի միում. զամ զբանս զայսոսիկ
61 գրեալս 'ի վր բաբելօնի։ *Եւ ասէ
երեմիա ցսարեայ՝ յորժամ երթայ-
ցես 'ի բաբելօն, և տեսցես՝ և ընթեռ-
նուցուս զամ զբանսդ զայդոսիկ։
62 *Եւ ասասցես, Տր՝ դու խօսեցար 'ի
վերայ տեղւոյս այսորիկ սատակել
զսա. մի՛ ևս լինել 'ի սմա բնակիչ 'ի
մարդոյ մինչև յանասուն. զի յապա-
63 կանութիւն յաւիտենից եղիցի։ *Եւ
եղիցի, յորժամ դադարեսցես յըն-
թեռնլոյ զմատեանդ զայդ, կապեսցես
'ի դմա քար. և ընկեսցես 'ի մէջ եփրա-
64 տայ։ *Եւ ասասցես, այսպէս ըն-
կղմեսցի բաբելօն՝ և մի՛ կանգնեսցի 'ի
չարեացն՝ զոր ես ածից 'ի վր նր։ և կա-
ցին մինչև ցայսվայր բանք երեմիայի։

## ԳԼ. ԾԲ.

1 Քսան ‖ և մի ամաց էր սեդեկիա ‖ Դ Թագ.
արքայ 'ի թագաւորել իւրում. 24. 18.
և մետասան ամ թագաւորեաց յԵրմ. 2. Մն.
և անուն մօր նորա ամիտաղ դուստր 36. 11.
2 երեմիայի ղոբնայ։ *Եւ արար չար
առաջի Տն որպէս արար յովակիմ։
3 *Զի ցասումն Տն, էր յԵրմ և յուդայ.
մինչև մերժեաց զնոսա յերեսաց իւր-
ոց. և ապստամբեցաւ սեդեկիա յար-
4 քայէն բաբելացւոց։ *‖ Եւ եղև յին- ‖ Եր.
ներորդի ամի թագաւորութեն նորա. 39. 1.
և յամսեանն տասներորդի՝ որ օր տասն Դ Թագ.
էր ամսոյն. եկն նաբուգոդոնոսոր ար- 25. 1.
քայ բաբելացւոց ամ զօրօք իւրովք
յԵրմ, և պաշարեաց զնա. և շինեաց
շուրջ զնովաւ պարիսպ առպարիսպ 'ի
5 չորեքկուսի վիմաց։ *Եւ եհաս քա-
ղաքն 'ի նեղութիւն. մինչև յամն մետա-
6 սաներորդ սեդեկիայ արքայի։ *Եւ
յամսին չորրորդ՝ որ օր ինն էր ամսոյն.
և զօրացաւ սով 'ի քաղաքին. և ոչ գտա-
նիւր հաց ուտելոյ ժողովրդեան երկ-
7 րին։ *Եւ խրամատեցաւ քաղաքն. և
ամ արք պատերազմողք փախեան՝ և
ելին 'ի քաղաքէ անտի 'ի գիշերի ընդ
ճանապարհ դրանն՝ ընդ պարիսպ և
ընդ պատուհան ընդ կողմն պարտի-
զին արքունի. (և քաղդէացիքն շուրջ
զքաղաքաւն էին.) և գնացին ընդ
8 ճանապարհ արաբացւոց։ *Եւ զհետ
եղեն զօրք թագաւորին քաղդէացւոց.
և հասին սեդեկիայ արքայի յանդս ե-
րիքովի. և ամ ծառայք նր ցրուեցան
9 'ի նմանէ։ *Եւ կալան զթագաւորն՝ և
ածին առ արքայ բաբելացւոց 'ի ռեբ-
ղաթայ երկիրն եմաթայ. և խօսեցաւ
10 ընդ նմա դատաստանօք։ *Եւ կոտո-
րեաց արքայն բաբելացւոց զորդիսն
սեդեկիայ յանդիման նորա. և զամ
իշխանս

իշխանս յուդայ կոտորեաց 'ի ռեբղա֊թայ ։ 11 * Եւ զաչսն սեդեկիայ կուրա֊ցոյց ․ և կապեաց զնա ձեռակապօք ․ և տարաւ զնա արքայն բաբելացւոց 'ի բաբիլօն ․ և ետ զնա 'ի տուն աղօրեաց ․ մինչև ցօր մահուան իւրոյ ։ 12 * Եւ յամսեանն հինգերորդի՝ որ օր տասն էր ամսոյն ․ այն ամ՝ իննուտասն էր նա֊բուգոդոնոսորայ արքային բաբելաց֊ւոց ․ եկն նաբուզարդան դահճապետ ․ որ կայր առաջի արքային բաբելացւոց ։ 13 * Եւ հրձիգ արար զտունն Տն ․ և զա֊պարանսն արքունի ․ և զամ տունս քաղաքին ․ և զամ ապարանս մեծա֊մեծս այրեաց հրով ։ 14 * Եւ զամենայն պարիսպ Եմի շուրջանակի ամ զօրքն քաղդեացւոց քակեցին՝ որք էին ընդ դահճապետին ։ 15 * Եւ յաղքատաց ժողովրդեանն՝ և 'ի մնացորդաց և զխիլքորսն՝ որք մնացին 'ի քաղաքին ․ և զփախստականսն՝ որք փախեան առ արքայն բաբելացւոց ․ և զմնացորդս ժողովրդեանն եթող 'ի նաբուզար֊դան դահճապետ ։ 16 * Եւ յաղքատաց երկրին եթող նաբուզարդան դահ֊ճապետ յայգեգործս և յարդիւնա֊րարս ։ 17 * Եւ զսիւնսն պղնձիս տան Տն ․ և զխարիսխսն ․ և զծովն պղնձի՝ որ էր 'ի տան Տն խորտակեցին քաղդեա֊ցիքն ․ և խաղացուցին զամ պղինձն 'ի բաբիլօն ։ 18 * Եւ զոտսն և զվերնախա֊րիսխսն ․ և զպսակսն ․ և զտաշտսն ․ և զմահհանսն ․ և զամենայն կահ պղնձի որով պաշտէին սպաս՝ էառ ։ 19 * Եւ զապ փողթն ․ և զամասարակողթն ։ և զպար զուտսն ․ և զաշտանակսն ․ և զճաշակսն ․ և զտուփսն որ ոսկի ոսկի, և որ արծա թի արծաթի, էառ դահճապետն ։ 20 * Եւ սիւնք երկու էին ․ և ծով մի ․ և ցուլքն երկոտասանք՝ որք կային ընդ ծովուն ․ զորս արար արքայ սաղօմոն 'ի տան Տն ․ և ոչ գոյր չափ պղնձոյն ․ և ամ կահին պղնձոյ ։ 21 * Եւ սեանցն երեսուն և հինգ կանգուն էր բարձրու թն միոյ միոյ սեան ․ և մանեակ յերկո տասան կանգնոյ շուրջ զնովաւ ․ և թանձրութն նորա շուրջ առ չորս մա տունս ։ 22 * Եւ ախաւեղագէսքն նոցա պղնձիք ․ և բարձրութն միոյ ախաւե ղագլխոյն 'ի հինգ կանգնոյ ․ և վանդա կապատ ․ և նռնաձևք 'ի վե ախաւե֊ղագլխոյն շուրջ շրջանակաւ՝ ամենայն պղնձի ․ ըստ նմին օրինակի և երկրոր դի սեանն ․ և նռնաձևք ․ (կանգուն առ կանգուն ։ յերկոտասան կանգնոյ ։) 23 * Եւ էին նռնաձևքն իննսուն և վեց ․ 'ի միոջէ կողմանէ ․ և էին ամենայն նռնաձևքն հարիւր 'ի վերայ վանդա֊կին շուրջանակի ։ 24 * Եւ էառ դահճա֊պետն զսարեայ զքահանայ զգլխաւ֊որն ․ և զսոփոնիայ զքահանայ զերկ֊րորդ ․ և երիս բարապանս ։ 25 * Եւ 'ի քաղաքէ անտի էառ ներքինի մի որ էր ոստիկան արանց պատերազմողաց ․ և եօթն այր անուանի՝ որք կային առա֊ջի թագաւորին գտեալս 'ի քաղաքին ․ և զդպրապետն զիշխան զօրացն , և զդպրապետ ժողովրդեան երկրին ․ և վաթսուն այր 'ի ժողովրդենէ երկրին՝ 26 որք գտան 'ի քաղաքին ։ * Եւ էառ զնս նաբուզարդան դահճապետ՝ և տարաւ առ արքայն բաբելացւոց 'ի ռեբղա֊թայ ։ 27 * Եւ եհար զնս արքայն բաբե֊լացւոց ․ և սպան զնոսա 'ի ռեբղաթայ յերկրին եմաթայ ․ և գերեցաւ յու֊դայ անդուստ յերկրէ իւրմէ ։

28 * Եւ այս ժողովուրդ է՝ զոր գերեաց նաբուգոդոնոսոր արքայ՝ յամին եօթն երորդի 'ի հրէից ․ երիս հազարս և քսան և երիս ։ 29 * Եւ յամի ութուտա֊սաներորդի նաբուգոդոնոսորայ ․ տա րան յերէմէ ոգիս ութն հարիւր երե֊սուն և երկուս ։ 30 * Եւ յամին քսանե֊րորդի և երրորդի նաբուգոդոնոսորայ խաղացոյց նաբուզարդան դահճա֊պետ 'ի հրէից ոգիս եօթնհարիւր քսա֊ռասուն և հինգ ։ ընդ ամ ոգիք չորք հազարք՝ և վեցհարիւր ։ 31 * Եւ եղև յա֊մին երեսներորդի՝ և եօթներորդի յա մի գերութեն յովակիմայ արքայի յու֊դայ ․ յերկոտասաներորդի ամսեանն 'ի քսան և չորս ամսոյն ․ բարձրացոյց ուղմարոդաք արքայ բաբելացւոց՝ յա մին յորում թագաւորեաց՝ զգլուխ յո֊վակիմայ արքայի յուդայ ․ և էհան զնա 'ի տանէն ուր կայր 'ի պահեստի ։ 32 * Եւ խօսեցաւ ընդ նմա քաղցրութբ ․ և եարկ զաթոռ նր 'ի վերոյ քան զա թոռս թագաւորացն ․ որք էին ը նմա 'ի բաբիլօն ։ 33 * Եւ փոխեաց զպատմու֊ճան բանտին նր ․ և ուտէր նա հաց հա նապազ առաջի նր զամ աւուրս որչափ և եկեաց ։ 34 * Եւ կարգեցաւ նմա ռո֊ճիկ հանապազորդ ․ զոր տային յար֊քայէն բաբելացւոց օրըստօրէ ․ մինչև ցօր մահու զամ աւուրս կենաց իւրոց ։

※ ※ ※
※ ※
※

※ ※ ※
※ ※
※

պարս նաբու֊ զարդան

տասն և ութն կան գուն

# ԹՐԷՆՔ · ԱՅՍ Է ՈՂԲՔ ԵՐԵՄԻԱՅԻ ՄԱՐԳԱՐԷԻ·

Գլուխ Հինգերորդ ։

Եւ եղեւ յետ գերութեան իսրայէլի · եւ աւերա-
ծոյն եմին · նստաւ երեմիա լալով, եւ ողբայր երե-
միա ողբս զայս ՚ի վերայ երուսաղէմի, եւ ասէր ·

## ԱԼԷՓ·

1 ԶԻԱՐԴ ԶԱՏԱՒ ՆՍՏԱՒ մենացեալ քաղաքն բազմամարդ՝ եւ եղեւ իբրեւ այրի լցեալ ժողովրդովք ՚ի մէջ հեթանոսաց · իշխան աշխարհին եղեւ հարկատու ։

## ԲԵԹ·

2 *Լալով ելաց ՚ի գիշերի՝ եւ արտասուք իւր ՚ի վերայ ծնօտից իւրոց · եւ ոչ գտաւ մխիթարիչ յամենայն սիրելեաց իւրոց ։ Ամենայն բարեկամք նորա անարգեցին զնա. եւ եղեն նմա իբրեւ թշնամիք ։

Երեմ. 13. 17.

## ԳԻՄԵԼ·

3 *Վարեցաւ ՚ի գերութիւն յուդայ ։ ՚ի բազում տառապանս ՚ի նեղութեան ծառայութեան, ծառայութեան · նստաւ ՚ի մէջ հեթանոսաց · եւ ոչ եգիտ հանգիստ ։ Ամենայն հալածիչք իւր հասին նմա ՚ի մէջ թշնամեաց իւրոց ։

## ԴԱԼԵԹ·

4 *Ճանապարհք սիոնի սգան՝ զի ոչ գոյր երթեւեկ տօնից տարեկանաց նորա. Ամենայն դրունք նորա եղեն յապականութիւն · եւ քահանայքն նորա հառաչեն՝ եւ հառաչեն՝ եւ յոգւոց հանեն ։ Կուսանք նորա ՚ի գերութիւն վարեցան · եւ ինքն դառնացեալ անձամբ ։

Երեմ. 14. 2.

## ՀԷ·

5 *Եւ եղեն նեղիչք նորա ՚ի գլուխ · եւ թշնամիք նորա յաջողեցան, զի Տէր կորացոյց զնա վասն բազում ամպարշտութեան նորա · տղայք նորա վարեցան ՚ի գերութիւն առաջի նեղչաց նորա ։

և ի նոցին փախճանել ղասնու թեամբ

## ՎԱՒ·

6 *Բարձաւ ՚ի դստերաց սիոնի ամենայն վայելչութիւն նորա · եղեն իշխանք նորա իբրեւ խոյք՝ որոց ոչ գտանիւր նոցա ճարակ ։ Երթային զցանկալի ցանկալի ինչս իւրեանց նեղողաց · զի հանդուցեն զանձինս իւրեանց ։ երթային՝ եւ ոչ ՚ի միտս իւրեանց՝ առաջի նեղչաց ըստ վարել հալածչացն ։

## ԶԱՅԻՆ·

7 *Յիշեաց Երուսաղէմ զօր տառապանաց, զօր անջատման իւրոյ · թախծեաց ընդ ամենայն ցանկալի ինչս՝ որ սասայեալ էր ՚ի սկզբանէ · յանկանիլ ժողովրդեանն ՚ի ձեռս թշնամեացն. եւ ոչինչ էր, որ օգնէր նմա · տեսին աւերակս նորա · ծաղր արարին, եւ ծիծաղեցան ՚ի վերայ գերութեան նորա ։

## ԽԵԹ·

8 *Մեղս մեղաւ Երուսաղէմ · վասն այնորիկ ամենայն գովիչք նորա կործանեցին զնա · զի տեսին զանարգանս նորա · զի նա ինքնին յետս դարձեալ յոգւոց ելանէ ։

յոգւոց հանէ

## ՏԵԹ·

9 *Պղծութիւն նորա առաջի ոտից իւրոց · եւ ոչ յիշեաց նա զվախճան իւր · իջոյց արտասուս մեծամեծս՝ եւ ոչինչ էր՝ որ մխիթարէր զնա ։ Տես Տէր զտառապանս իմ · զի բարձրացան թշնամիք իմ ՚ի վերայ իմ ։

նա զվախճան իւր

## ԻՈԴ·

10 *Զձեռն իւր ձգեալ նեղչին ՚ի վերայ ցանկալեաց իմոց ։ տեսի ես զհեթանոսս · զի մտին ՚ի սրբութիւն քո · որոց պատուիրեցեր թէ մի՛ մտցեն ՚ի տեղի ժողովրդոց քոց ։

## ԿԱՓ·

11 *Ամենայն ժողովուրդք յոգւոց ելանէին ՚ի խնդիր հացի · տային զամենայն ցանկալի ինչս իւրեանց գինս հացի · զի դարձուսցեն զանձինս իւրեանց յինքեանս ։ Տես Տէր՝ եւ հայեաց · զի եղէ անարգեալ՝ եւ արհամարհեալ ։

## ԼԱՄԵԴ·

12 *Ձեզ ասեմ · ձեզ ասեմ անցաւորք ճանապարհաց ։ դարձարուք՝ հայեցարուք՝ եւ տեսէք · թէ իցեն երբէք ցաւք ըստ ցաւոցս լեալ՝ որք ՚ի վերայ իմ հասին ։ բարբառեցաւ Տէր · եւ կորացոյց զիս ։ յաւուր բարկութեան սրտմտութեան իւրոյ ։

## ՄԻՄ·

13 *Ի բարձանց իւրոց առաքեաց հուր յոսկերս իմ · ցանց ձգեաց ոտից իմոց՝ եւ դարձոյց զիս յետս իմ · արար յապականութիւն զանձն իմ · զօրհանապազ ՚ի տառապանս տրտմութեան ։

## ՆՈՒՆ·

14 *Կանխեաց Տէր ՚ի վերայ տրտմութեան

իմոյ՝ և էարկ զինև զձեռն իւր ։ ծանրացոյց զլուծ իւր 'ի վերայ պարանոցի իմոյ ։ տկարացաւ զօրութիւն իմ․ մատնեաց զիս Տր̃ 'ի ձեռս ցաւոց իմոց ․ և ոչ ևս կարեմ հանդարտել ։

ՍԱՄԷՔ.

15 * Ջնջեաց 'ի միջոյ իմմէ զընտիր ընտիր զօրուց իմոց ։ կոչեաց 'ի վ̃ր ընտրելոց իմոց ժամանակս բեկման ։ հնձան էհար Տէր կուսի դստերն յուդայ ։

ԱՅԻՆ.

‖ Երեմ. 14. 17.

16 * ‖ Վ̃ս այսորիկ ես աւասիկ 'ի լալ մատուցեալ եմ ։ ակն իմ իջոյց զարտասուս ․ զի հեռի եղեն յինէն մխիթարիչք իմ․ որ դարձուցանէ զանձն իմ յիս ․ մատնեցան որդիք իմ՝ յապականութիւն ․ զի զօրացաւ թշնամին ։

ՓԷ.

17 * Տարածեաց սիոն զբազուկս իւր առ Ա̃ծ․ և ոչոք էր՝ որ մխիթարէր զնա ։ շուրջ զնովաւ նեղիչք ն̃ր ․ եղև Եմ̃ աղտեղեալ իբրև կին մի 'ի մէջ նոցա ։

ՍԱԴԷ.

18 * Արդար է Տր̃ Ա̃ծ՝ զի ես դառնացուցի զնա ։ լուարուք զայս ա̃մ ժողովք ․ և տեսէք զցաւս իմ ։ օրիորդք իմ և երիտասարդք իմ վարեցան 'ի գերութիւն ։

ԿՈՓ.

19 * Կոչեցի ես զսիրելիսն իմ․ և նոքա արհամարհեցին զիս ․ քահանայք իմ և երիցունք սատեն 'ի քաղաքի սատակեցան ։ խնդրեցին զկերակուր․ զի դարձուսցեն զոգիս իւրեանց , և ոչ գտաւ ։

ՌԻՍ.

20 * Տե՛ս Տր̃՝ զի նեղեալ եմ․ ոսկերք իմ խռովեցան ․ սիրտ իմ գելաւ յիս ․ և ես դառնացեալ ․ արտաքուստ ժառանգեաց զիս սուր՝ որպէս և մահ 'ի ներքուստ ։

ՇԻՆ.

21 * Լուարուք , լուարուք զայս ․ զի հեծեմ․ հառաչեմ․ և ոչոք է՝ որ մխիթարէ զիս ․ ա̃մ թշնամիք իմ լուան զչարիս իմ․ և ոտն հարին ինձ ․ զի դու արարեր զա̃մ․ և դու կոչեցեր զժամանակն զայն․ և եղև ինձ վա՜յ վա՜յ ։

ԹԱՒ.

22 * Մտին չարիքն ա̃մ առաջի քո ․ և ճռաքաղ արա դու զնոսա ․ զորօրինակ արարեր ճռաքաղ զիս 'ի վ̃ր ա̃մ մեղացն իմոց ․ զի բազում եղեն հեծութիւնք իմ․ և սիրտ իմ՝ լի եղև տրտմութե̃ ։

## ԳԼ. Բ.

ԱԼԷՓ.

1 Օ իարդ խաւարեցաւ սրտմտութե̃ բարկութե̃ Տն̃ դուստր սիոնի ։ ընկէց յերկնից յերկիր զփառս իսլ̃ի․ և ոչ ևս յիշեաց զպատուանդան ոտից նորա ։ յաւուր սրտմտութե̃ բարկութեան իւրոյ ։

ԲԷԹ.

2 * Ընկլոյզ Տր̃ յանխնայ զա̃մ գեղ յակոբայ ․ քակեաց , և ոչ անխնայեաց ։ զամուրս դստեր յուդայ կործանեաց յերկիր ․ անարգեաց զիշխանս և զթագաւորս նոցա ։

ԳԻՄԷԼ.

3 * Փշրեաց Տր̃ յաւուր սրտմտութե̃ բարկութե̃ իւրոյ զա̃մ եղջիւրս իսլ̃ի ․ և դարձոյց յետս զաջ ն̃ր առաջի թշնամեաց նորա ։ հուր պատեաց զյակոբ․ հաշեաց և մաշեաց զամենայն որ շուրջ զնովաւ է ։

ԴԱԼԷԹ.

4 * Եմուտ ընդ գիրկս իւր իբրև թշնամի․ հաստատեաց զաջ իւր 'ի վերայ ն̃ր․ և սպան զա̃մ ցանկալի դստեր սիոնի ։ էհեղ 'ի վերայ զսրտմտութիւն բարկութե̃ իւրոյ հրով ։

ՀԷ.

5 * Եղև Տէր իբրև թշնամի ․ կործանեաց զի̃էլ․ կործանեաց զթագաւորս նորա ․ կործանեաց զա̃մ ամուրս նորա․ և բազմացոյց դստերն յուդայ տառապանս 'ի վերայ տառապանաց ։

ՎԱՒ.

6 * Խզեաց իբրև զայգի զխորանս ն̃ր․ և ապականեաց զտօնս տարեկանաց ն̃ր ․ մոռացաւ Տէր՝ զոր արար սիոն տօնս տարեկանաց և շաբաթս․ և զայրացոյց 'ի մռնչել բարկութե̃ իւրոյ , զթագաւորս՝ և զիշխանս՝ և զքահանայս ։

ԶԱՅԻՆ.

7 * Մերժեաց Տր̃ զսեղան իւր․ և՝ 'ի բաց ընկէց զսրբութիւն իւր ․ կործանեաց զպարիսպս աշտարակեայս տաճարաց ն̃ր ։ ձայն ետուն՝ գոչեցին 'ի տան Տն̃․ իբրև յաւուրս տօնից տարեկանաց ն̃ր ։

ԽԷԹ.

8 * Ընկեցաւ կործանեալ պարիսպ դստեր սիոնի ։ չափ արկին՝ և ոչ անդրէն դարձուցին զձեռս իւրեանց ։ սուգ առին մահարձանք ․ և պարիսպք առ հասարակ դողացեալ կործանեցան ։

ՏԷԹ.

9 * Կործանեցին յերկիր զդրունս ն̃ր․ և խորտակեցին զնիգս ն̃ր ․ թագաւորք ն̃ց՝ և իշխանք ն̃ց 'ի մէջ հեթանոսաց․ ոչ գոյին օրէնք՝ և մարգարէք ․ և ոչ էին այնք, որք տեսանէին տեսիլ 'ի Տէ̃ ։

ԻՈԴ.

10 * Նստին՝ հարթ եղեն գետնոյ․ կարկեցան ծերք դստեր սիոնի․ հող արկին զգլխովք իւրե̃ց․ քրձազգածք եղեն․ յերկիր կործանեցին զիշխանս կուսանաց Եմ̃ի ։

Ք. Ա. Ֆ.:

11 *Պակասեցան աչք իմ յարտասուաց · խռովեցաւ որովայն իմ · յերկիր լուծան փառք իմ · 'ի վ՝ր բեկման դստեր ժողովրդեան իմոյ · 'ի սատակել տղայոց ստնդեայց · ընդ ամենայն փողոցս քաղաքին ։

Լ. Ա. Մ. Ե. Թ.:

12 *'Ի մարց իւրեանց պա՛հանջէին հաց և գինի · 'ի պակասիլ՝ Թափել՝ հանել ոգիս իւրեանց · ընկեցեալ ցրուեալ կային 'ի մէջ քաղաքին ։

Մ. Ե. Մ.:

13 *Զի՞նչ վկայութի՛ւն վկայեցից քեզ · կամ զի՞նչ նմանութիւն նմանեցուցից քեզ դուստր եղմի · ո՞վ մխիթարեսցէ զքեզ դուստր սիոնի · զի ծանրացաւ բաժակ բեկման քոյ՝ իսկ ո՞վ իցէ որ բժշկեսցէ զքեզ ։

Ն. Ո. Ւ. Ն.:

14 *Մարգարէքն քո տեսին քեզ տեսիլս զուր՝ տարապարտուց՝ անօգուտս · և ոչ յայտնեցին քեզ զանիրաւութիւնս քո · զի դարձ լիցի քեզ 'ի գերութէ քումմէ ։ այլ պատմեցին քեզ առեղծուածս սնոտիս · և մերժումն 'ի տեղւոջէ քումմէ ։

Ս. Ա. Մ. Ե. Կ.:

15 *Ծափ զծափ հարին ամ անցաւորք ճանապարհի · շչէին՝ շարժէին ըզ գլուխս իւրեանց 'ի վերայ դստեր սիոնի · մի՛՝ այս այն քաղաք է՝ ասէին · պսակ փառաց ուրախութեան ամ երկրի ։ (Եզեկ.)

Ա. Յ. Ի. Ն.:

16 *Բացին զբերանս իւրեանց 'ի վերայ քո ամ թշնամիք քո · շչէին, կրճտէին զատամունս իւրեանց՝ և ասէին ։ Եկա՛յք, կլցուք մեք զսա · զի այս այն օր է՝ որում ակնունէաք · ահաւասիկ տեսաք՝ և գտաք՝ և հասաք մեք սմա ։

Ֆ. Ե.:

17 *Արար Տէր՝ զոր խորհեցաւ · կատարեաց զբանս իւր, զոր պատուիրեաց յաւուրցն առաջնոց · քակեաց, և ոչ անխնայեաց · ուրախ արար 'ի վերայ քո զթշնամիս քո · և բարձր արար զեղջիւր նեղչաց քոց ։ (Մովս. 26. 16. 2. Օրէ. 28. 15.)

Ս. Ա. Դ. Ե.:

18 *Աղաղակեցին սիրտք նոցա առ պարիսպս դստեր սիոնի · Հոսեսցեն իբրև զհեղեղ զարտասուս 'ի տուէ և 'ի գիշերի · մի՛ լռեր՝ և մի՛ դադարեր՝ մի՛ տար դուլ արտասուաց ։ (Երեմ. 14. 17. Ողբ. 1. 16.)

Կ. Օ. Ֆ.:

19 *Արի՛ 'ի խոստովանութիւն 'ի գիշերի · սկիզբն 'ի գլուխ պահոց քոց · հեղ իբրև զջուր զսիրտ քո առաջի Տն · համբարձ զձեռն քո վս անձանց տղայոց՝ որք լուծան 'ի սովու · 'ի գլուխ ճանապարհաց ելից մտից քոց ։

Ռ. Ե. Ս.:

20 *Տես Տէր՝ և հայեա՛ց · ո՞ւմ արարեր այսպէս ճռաքաղ՝ եթէ կերիցեն կանայք զպտուղս որովայնի իւրեանց ։ արարեր ճռաքաղ · արկին 'ի ներքս ըզ խոհակերս · զենուլ 'ի ներքս 'ի սրբութեն Տն զտղայս ստնդեայս · զքահանայն և զմարգարէն ։ (արկէին)

Շ. Ի. Ն.:

21 *Ննջեցին 'ի վերայ ելիցն ճանապարհաց առհասարակ՝ ծերն՝ և տղայն · կուսանն և երիտասարդն վարեցան 'ի գերութիւն · 'ի սուր արկեր՝ կոտորեցեր յաւուր բարկութեն քոյ · զեներ՝ խոհակերեցեր · և ոչ անխնայեցեր ։

Թ. Ա. Ւ.:

22 *Կոչեցեր իբրև զօր տարեկանաց պանդխտութեան իւրում շուրջ զինև · և ոչոք գտանիւր յաւուր սրտմտութեան բարկութեն Տն՝ զի փախչիւր · ապրեալք մնացեալք, 'ի պահել բազմանալ թշնամեացն իմոց ամենեցուն ։ (պարէկս · նոյ զօր · պանդխ֊ · տօնէ · ենոյ)

Գ Լ: Գ:

Ա. Լ. Ե. Ֆ.:

1 ԵՍ այր հզօր հայեցեալ յաղքատութիւն իմ · 'ի ձեռն գաւազանի սրտմտութեն իւրոյ ։ 2 *Ընկլոյզ զիս, և էած 'ի վերայ իմ խաւար՝ և ոչ լոյս ։

3 *Բայց սակայն դարձոյց 'ի վերայ իմ զձեռն իւր հանապազ ։

Բ. Ե. Թ.:

4 *Մաշեաց զմորթ և զմարմինս իմ · և զոսկերս իմ փշրեաց առհասարակ ։

5 *Շինեաց 'ի վերայ իմ · և պատեաց զգլխով իմով ։ 6 *Նշ ջանացաւ , նըստոյց զիս 'ի խաւարի իբրև զմեռեալ յաւիտենից ։

Գ. Ի. Մ. Ե. Լ.:

7 *Կուտեաց 'ի վերայ իմ · և ոչ կարեմ խլրտել · ծանրացոյց 'ի վերայ իմ քան 8 զպղինձ ։ *Զի թէպէտ և ասացից՝ և աղաղակեցից · փակեալ և արգելեալ 9 է առաջի իւր զաղօթս իմ ։ *Նարկ զարգել ճանապարհաց իմոց · և նեղեաց 'ի խորտուբիլ զշաւիղս իմ ։

Դ. Ա. Լ. Ե. Թ.:

10 *Նա՛ եղև ինձ իբրև արջ դարանակալ · և իբրև առիւծ թաքուցեալ ։

11 *Նմուտ զհետ իմ · հալածեաց՝ և եհաս · և լքոյց զիս յապականութիւն ։

12 *Նմուտ ընդ գիրկս իւր՝ և ելից զիս նետիւք իբրև զնպատակ ։ (լարեաց զաղեղն իւր՝ և եդ զիս իբրև զնպատակ)

Հ. Ե.:

13 *Կորեաց ընդ մէջ զերիկամունս իմ · 14 արար զիս նետալից ։ *Նա՛ եղէ ծաղր ժո֊

ժողովրդեան իմոյ· և երգք նոցա զօր հանապազ։ 15 *Ջամբեաց ինձ լեղի· և արբեցոյց զիս դառնութե̃։

ՎԱՒ։

16 *Խարալից արար զատամունս իմ· և ջամբեաց ինձ զմոխիր։ 17 *Մերժեաց 'ի խաղաղութենէ զանձն իմ· մոռացայ զբարիս։ 18 *Կորեաւ յաղթութիւն իմ· և յոյս իմ 'ի Տէ̃։

ԶԱՅԻՆ։

19 *Յիշեցի յաղքատութենէ իմմէ· և 'ի հալածմանց իմոց՝ դառնութիւն և բարկութիւն։ 20 *Յուշ եղիցի միանգամայն· ձանձրացաւ յիս անձն իմ։ 21 *Զայս ինչ կարգեցի 'ի սրտի իմում· վասն այնորիկ և համբերից նմա։

ԽԷԹ։

22 *Ողորմութիւնք Տն̃ անսպառք են, և ոչ նուաղին գթութիւնք նորա։ 23 *Նորոգումն առաւօտու բազմանայ ճշմարտութիւն քո Տր̃։ 24 *Ասաց անձն իմ, բաժին իմ է նա· վասն այսորիկ ակն կալայց նմա։

ՏԷԹ։

25 *Բարերար է Տր̃ 'ի վերայ համբերողաց իւրոց· և անձին՝ որ խնդրէ զնա։ 26 *Բարի է՝ որ համբերէ նմա ճշմարտութե̃· և հանգչի նա 'ի փրկութե̃ Տն̃։ 27 *Բարի է մարդոյ՝ որ առնու զլուծ խոնարհութե̃ 'ի մանկութենէ իւրմէ։

ԻՕԴ։

28 *Նստցի միայն լուռ 'ի տան իւրում· զի անձամբ իւրով եառ յանձն զլուծն քո։ 29 *Տացէ հողոյ զբերան իւր· մի̃գի կայ յոյս։ 30 *Մատուսցէ հարկանողաց իւրոց զծնօտս՝ լցցի նախատանօք։

ՔԱՓ։

31 *Այլ ոչ 'ի յաւիտեան մերժեսցէ Տր̃։ 32 *Որ տառապեցոյցն՝ նոյն ողորմեսցի ըստ բազում ողորմութեան իւրում։ 33 *Զի չէ պատասխանի 'ի սրտէ իւրմէ· և խոնարհեցոյց զորդիս մարդկան։

ԼԱՄԵԴ։

34 *Խոնարհեցուցանել 'ի ներքոյ ոտից նորա· զա̃մ կապեալս երկրի· մատնել զմարդ 'ի դատաստանի Տն̃։ 35 *Խոտել զիրաւունս առն առաջի երեսաց բարձրելոյն։ 36 *Պատժել զմարդ 'ի դատաստանի Տն̃ ոչ տեսանէ։

ՄԻՄ։

Ամովս. 3. 6.

37 *Ո՞չ ասաց՝ եթէ այսպէս ասաց Տր̃՝ և եղև՝ ոչ պատուիրեաց։ 38 *Ի բերանոյ բարձրելոյն ոչ ելցեն աստի չարիք· և ոչ բարիք։ 39 *Զի՞նչ տրտնջեսցէ մարդ կենդանի· կամ այր 'ի վերայ մեղաց իւրոց։

ՆՈՒՆ։

40 *Քննեցան ճանապարհք մեր· և կշտամբեցան· դարձցուք մեք 'ի Տր̃։
41 *Համբարձցուք զձեռս մեր սրտիւք հանդերձ 'ի բարձունս երկնից։
42 *Մեք ամպարշտեցաք· և ոչ հաճեցաւ ընդ մեզ։

ՍԱՄԻՔ։

43 *Յայց ելեր սրտմտութե̃ բարկութե̃· և հալածեցեր զմեզ· կոտորեցեր, և ոչ անխնայեցեր։ 44 *Փակեցեր ամպօք զերկինս՝ զի մի՛ հասցեն աղօթք մեր առ քեզ։ 45 *Ընկեցեր, մերժեցեր զմեզ արհամարհեալս· և անարգեալ արարեր զմեզ 'ի մէջ զօրաց հեթանոսաց։

ՓԷ։

46 *Բացեր 'ի մեզ զա̃մ բերանս թշնամեաց մերոց։ 47 *Ահ և երկիւղ եկն 'ի վերայ մեր· բեկումն և սատակումն։
48 *Ելս հոսանս ջուրց իջուցին աչք մեր՝ 'ի վերայ բեկման դստեր ժողովրդեան իմոյ։

ԱՅԻՆ։

49 *Աչք իմ ընկլան՝ և ոչ լռեցից՝ և ոչ լռեայց։ 50 *Մինչև երևեսցի՝ և տեսցէ Տր̃ յերկնից։ 51 *Ակն իմ կաթեսցէ 'ի վերայ անձին իմոյ· քան զա̃մ դստերս քաղաքաց իմոց։

ՍԱԴԷ։

52 *Որսալով որսացան զիս իբրև հաւորս թշնամիք իմ· որսացան զիս տարապարտուց։ 53 *Հեղձուցին 'ի գբի զկեանս իմ· եդին զվէմ 'ի վր̃ իմ։
54 *Զեղան ջուրք զգլխով իմով· և ասացի՝ բա̃մ ահա մերժեցայ։

ԿՈՓ

55 *Կարդացի զանուն քո Տր̃ 'ի գբոյ տառապանաց։ 56 *Եւ դու լուար ձայնի իմում· մի՛ թաքուցաներ զունկն քո 'ի խնդրուածոց իմոց· այլ ընդ արձակեա́ ինձ, փրկեա́ զիս։ 57 *Դու յօգնել ինձ մերձեցար· և ասացեր՝ բա̃մ յորում աւուր կարդասցես առ իս՝ մի՛ երկիցես։

ՌԻՍ։

58 *Դատեցեր Տր̃ զդատաստան անձին իմոյ· փրկեցեր Տր̃ զզրկեալն։
59 *Տեսեր Տր̃ զխռովութիւնս իմ· դատեցեր Տր̃ զդատաստանս իմ։ 60 *Տեսեր զամենայն իրաւունս իմ· հայեցար յա̃մ խորհուրդս իմ։

ՇԻՆ։

61 *Լուր Տր̃ զնախատինս նոցա· և զա̃մ խորհուրդս նոցա՝ որք զինէն։
62 *Ի շրթունս յարուցելոց 'ի վերայ իմ զօրհանապազ։ 63 *Զնստիլ նոցա՝ և զյառնել նոցա 'ի միտ առ ի ես 'ի խորհրդոց անտի նոցա։

Թ. Ա. Ւ:

*Հայեաց 'ի հպարտութիւն անձանց նց· և հատուսցես նոցա Տր զհատուցումն նոցա 'ի գլուխս նոցա: 64 *Հատուսցես նոցա ըստ սնոտութեան սրտից նոցա: 65 *Հալածեսցես զնս սրտմտութբ քով· և մաշեսցես զնոսա բարկութբ քով 'ի ներքոյ երեսաց երկնից: 66

## ԳԼ: Դ:

Ա. Լ. Է. Փ:

Օիա՛րդ շլացաւ ոսկին· այլագունեցաւ արծաթն սպիտակ· հալեցան՝ սփռեցան ակունք նց 'ի գլուխ անցից Ճանապարհաց նոցա: 1

Բ. Է. Թ:

*Որդիքն սիոնի պատուականք· որք առաւել քան զականս պատուականս· զիա՛րդ համարեցան իբրև ամանք խեցեղէնք ձեռագործք որդւոց բրտի: 2

Գ. Ի. Մ. Է. Լ:

*Մերկացուցին իբրև վիշապք զստինս իւրեանց· և դիեցուցին զկորիւնս իւրեանց· եղեն դստերք ժողովրդեան իմոյ 'ի տանջանս հարուածոց· զի չիք նր բժշկութիւն· և տառապեցան իբրև ջայլամունք յանապատի: 3

Դ. Ա. Լ. Է. Թ:

*Կցեցան լեզուք դիեցիք մանկանց 'ի քիմս իւրեանց 'ի ծարաւոյ իւրեանց· տղայք զհաց խնդրէին· և ոչոք էր՝ որ բերէր նոցա: 4

Հ. Է:

*Որք ուտէին զկերակուր՝ եղծանէին 'ի վերայ անցից Ճանապարհաց· որք 'ի գիրկս դգուեալք էին· գիրկս արկեալ աղբեաց թօթափեալ թաւալէին: 5

Վ. Ա. Ւ:

*Բազմացաւ անօրէնութիւն դստեր ժողովրդեան իմոյ· քան զանօրէնութիւն սոդոմայ կործանելոյ· 'ի Ճեպս փոյթս յառնէին· և ոչուրեք էր վաստակ ձեռաց իւրեանց: 6

Ծննդ. 19.24.

Զ. Ա. Յ. Ի. Ն:

*Սրբեցան ուխտաւորք նոցա· իբրև զձիւն սպիտակացան· իբրև զկաթն զտեցան· իբրև զականս շափիղայից 'ի հատուցման իւրեանց: 7

Խ. Է. Թ:

*Թխացան քան զածուխ տեսիլք իւրեանց· և ոչոք ճանաչէր զնս· զի դնին յանցս Ճանապարհաց· մածեալ էր մորթ յոսկերս նոցա· բրտացան նոքա· և եղեն իբր զփայտ չորացեալ: 8

Տ. Է. Թ:

*Գեղեցիկք էին վիրաւորք դիականց անկելոց 'ի սրոյ՝ քան զանկեալսն 'ի սովու· երթային վիրաւորք ազգք ազգք արանց: 9

Ի. Օ. Դ:

10 *Ձեռք կանանց ողորմածաց եփեցին զմանկունս իւրեանց· և եղեն նոցա 'ի կերակուր· առ 'ի բեկումն դստեր ժողովրդեան իմոյ:

Ք. Ա. Փ:

11 *Լած՝ և կատարեաց Տր զսրտմտութիւն բարկութեան իւրոյ· եհեղ զսրտմտութիւն բարկութեան իւրոյ· և բորբոքեցոյց զհուր 'ի սիոն· և եկեր զհիմունս նր:

Լ. Ա. Մ. Ի. Դ:

12 *Ո՛չ հաւատացին ամենայն թագաւորք երկրի· որք բնակեալք էին 'ի տիեզերս· եթէ մտցէ թշնամի ընդ դրունս երէմի:

Մ. Է. Մ:

13 *'Ի մեղս մարգարէից իւրեանց· և 'ի մեղս քահանայից իւրեանց՝ որք հեղուին զարիւնս արդարոց 'ի միջի իւրեանց:

Ն. Ո. Ւ. Ն:

14 *Շարժեցան՝ սասանեցան զօրութիւնք նոցա յելս Ճանապարհաց· պղծեցան՝ թօթափեցան յարեան մեռելոտւոց· զի ոչ կարէին զհանդերձս նոցա անարատ պահել 'ի նոցանէ:

Ս. Ա. Մ. Է. Ք:

15 *'Ի բաց կացէք՝ 'ի բաց կացէք՝ պիղծս կարդացէք զնոսա· 'ի բաց կացէք, մի մերձենայք· զի շարժեցան, բորբոքեցան· ասացէք 'ի հեթանոսս՝ զի մի ևս յաւելցեն բնակել 'ի նոսա:

Ա. Յ. Ի. Ն:

16 *Կենդանեաւ մերով նուաղեցան աչք մեր յօգնականութէ մերմէ· զի տարապարտուց կացուցեալ էր մեզ զնս դէտս 'ի անտառս:

Փ. Է:

17 *Երեսք Տն բաժանեալ է 'ի նոցանէն· և ոչևս յաւելցի հայել 'ի նոսա· երեսք քահանայից ակն ոչ առին ծերոց· ոչ ողորմեցան տղայոց նոցա: դէտակն կալեալ հայէաք յազգս ձեր՝ ոչ փրկէին զմեզ:

Ս. Ա. Դ. Է:

18 *Որսացան զմեզ· փոքր միւսևս սատակեալ ընջեալ էր զմեզ 'ի քաղաքաց մերոց· էհաս ժամ, հասեալ է ժամանակ, կատարեցան աւուրք մեր, լցան ժամանակք:

Կ. Օ. Փ:

19 *Թեթևացան հալածիչք մեր 'ի վր լերանց· իբրև զարծուիս երկնից· 'ի վերայ լերանց բարձանց Ճախրեցին· և յանապատի 'ի դարան մտեալ պաշարեցին զմեզ:

ՌԷՍ·

Ռ Ի Ս ·

20 * Հոգի երեսաց մերոց Տր Քս պատեցան զնովաւ յապականութե իւրեանց · մինչդեռ մեք խորհեաք · ընդ հովանեաւ նորա նստեաք 'ի մէջ հեթանոսաց :

Շ Ի Ն :

21 * Ցնծա՛ դու՝ և ուրախ լեր դուստր Եդովմայեցւոց · որ բնակեալ ես յերկրիդ աւստրացւոց : եկեսցէ բաժակս 'ի վերայ քո · արբցես , արբեսցիս , և անդրէն դարձուսցես :

Թ Ա Վ :

22 * Պատեցան անօրէնութիւն քո սիօն · ոչ ևս յաւելցի խախտել զքեզ · այց արար անօրէնութեան քում դուստր Եդովմայ · յայտնեաց զամենայն ամպարշտութիւնս քո :

# ԱՂՕԹՔ ՍՐԲՈՅՆ ԵՐԵՄԻԱՅԻ :

1 ՅԻՇԵԱ՛ ՏՐ ՈՐ ինչ անցք անցին ընդ մեզ · նայեա՛ց, և տես զնախատինս մեր :
2 * Ժառանգութի մեր դարձաւ յօտարութի · և բնակութի մեր 'ի նժդեհութիւն :
3 * Որբ մնացաք մեք՝ և ոչ գոյր մեր հայր : մարք մեր իբրև այրիք 'ի ժամանակաց մերոց :
4 * Ջուրս մեր գնոց արբաք · և փայտն մեր առանց փոխանակի :
5 * Ի վերայ պարանոցի մերոյ՝ հալածականք եղեաք · և ոչ գտաք հանգիստ :
6 * Ձեռնաձիգք եղեն եգիպտացիքն՝ և ասորեստանեայք , յագեցուցանել հացիւ :
7 * Հարքն մեր մեղան · և չիք ուրեք 'ի միջի · և մեղք հարցն ընդ մեզ ելին :
8 * Ծառայք տիրեցին մեզ · և այն որ փրկէրն զմեզ 'ի ձեռաց նոցա , չի՛ք ուրեք 'ի միջի :
9 * Ընկա՛յք համբարս 'ի ներքս արասցուք յերեսաց սրոյ անապատի :
10 * Մորթք մեր կարկամեցան իբրև զթոնիր հնացեալ յերեսաց բարկութե սովուն :
11 * Զկանայս խայտառակեցին 'ի սիօն · և զկուսանս 'ի քաղաքս յուդայ :
12 * Զծերս կախեցին զլուլթայ · և 'ի պառաւունս ոչ խնայեցին :
13 * Ա՛յլ ընտիր ընտիրքն զձայն բարձեալ կականէին · և երիտասարդքն զփայտի հարեալ տկարացան :
14 * Ծերք 'ի դրանցն մեկնեցան · և ընտիր ընտիր յօրհնութեանց լռեցին :
15 * Լքան սիրտք մեր յուրախութենէ · և դարձան 'ի սուգ օրհնութիւնք պարուց մերոց :
16 * Անկաւ պսակն 'ի գլխոց մերոց : վա՛յ մեզ՝ վա՛յ մեզ՝ զի մեղաք :
17 * Վասն այսորիկ տոճաւ մեզ սիրտ ցաւագին · վասն այսորիկ և խաւարեցան աչք մեր :
18 * 'Ի վերայ լերին սիօնի · զի դարձան յապականութի · և աղուէսք մուտ և ել առնէին 'ի սրահս նորա :
19 * Ա՛յլ դու Տր յաւիտեան կաս · և աթոռ քո յազգէ յազգ :
20 * Ընդէ՞ր մինչև իսպառ մոռացար զմեզ · հարցես՝ թողցես՝ և լքցես զմեզ մինչև յերկար ժամանակս :
21 * Դարձո՛ զմեզ Տէր՝ և դարձցուք · նորոգեա՛ զմեզ Տր իբրև զաւուրսն առաջինս :
22 * Զի մերժելով մերժեցեր զմեզ · բարկացաւ սրտմտութի բարկութե քոյ 'ի վերայ մեր մինչև իսպառ :



# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԲԱՐՈՒՔԱՅ։

## Գլուխ Առաջներորդ։

1 ԵՒ ԱՅՍ ԵՆ ԲԱՆՔ թղթոյն, զորս գրեաց Բարուք որդի Ներեայ. որդւոյ Մաասեայ. որդւոյ Սեդեկեայ. որդւոյ Ասադայ. որդւոյ Քեղկեայ 'ի Բաբելոն։ 2 * Յամին հինգերորդի՝ որ օր եօթն էր ամսոյն. 'ի ժամանակի յորում առին Քաղդէացիքն զԵ՟մ. և այրեցին զնա հրով։ 3 * Եւ ընթերցաւ Բարուք զբանս թղթոյս այսորիկ յականջս Յեքոնիայ՝ որդւոյ Յովակիմայ արքայի Յուդայ. և յականջս ամ՟ ժողովրդեանն. որք գային 'ի մատեանն։ 4 * Եւ յականջս զօրացն. և որդւոց թագաւորացն. և յականջս ծերոցն. և յականջս ամ՟ ժողովրդեանն. 'ի փոքուէ մինչև ցմեծամեծս. ամենեցուն որք բնակեալ էին 'ի Բաբելոն. առ սուդ գետով։ 5 * Որք լռեալ լային՝ և պահէին. և կային յաղօթս առաջի Տ՟ն։ 6 * Եւ ժողովեցին արծաթ ըստ իւրաքանչիւր կարի։ 7 * Եւ առաքեցին յԵրուսաղէմ առ Յովակիմ որդի Քեղկեայ՝ որդւոյ Սաղոմեայ քահանայ. և առ այլ քահանայս գտեալս ընդ նմա յԵ՟մ։ 8 * Յառնուլ նր՟ զսպաս տան Տ՟ն. որ ել 'ի տաճարէն՝ դարձուցանել յերկիրն Յուդայ 'ի տասներորդում սիւան ամսոյն զսպասն զարծաթեղէնս՝ զորս արար Սեդեկիա որդի Յովսիայ արքայի Յուդայ։ 9 * Յետ գերելոյ Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց՝ զՅեքոնիայ՝ և զիշխանսն՝ և զկալանաւորականսն՝ և զզօրաւորսն՝ և զժողովուրդ երկրին՝ յԵ՟մէ. և տարաւ զն՟ա 'ի Բաբելոն։ 10 * Եւ ասեն, ահաւասիկ առաքեցաք առ ձեզ զարծաթ. և գնեցէք արծաթոյդ ողջակէզս՝ և զվասն մեղաց՝ և զկնդրուկ՝ և արարէք մաննայ. և հանէք 'ի սեղանն Տ՟ն Ա՟Ծ մերոյ։ 11 * Եւ աղօթս արարէք 'ի վերայ կենաց Նաբուգոդոնոսորայ արքայի Բաբելացւոց. և 'ի վ՟ր կենաց Բաղտասարայ որդւոյ նր՟. զի եղիցին աւուրք նոցա իբրև զաւուրս երկնից 'ի վ՟ր երկրի։ 12 * Տացէ մեզ Տ՟ր զօրութի. և լուսաւոր արասցէ զաչս մեր. և կեցցուք ընդ հովանեաւ Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց. և ընդ հովանեաւ Բաղտասարայ որդւոյ նր՟. և ծառայեսցուք նց՟ աւուրս բազումս. և գտցուք շնորհս առաջի նոցա։ 13 * Աղօթս արարէք և 'ի վ՟ր մեր առ Տ՟ր Ա՟Ծ մեր. զի մեղաք Տ՟ն Ա՟Ծ մերում։ և ոչ դարձաւ սրտմտութի Տ՟ն և բարկութի նր՟ 'ի մէնջ մինչև ցայսօր։ 14 * Եւ ընթերցջիք զթուղթդ զայդ. զոր առաքեցաք առ ձեզ. դնել 'ի տուն Տ՟ն՝ յաւուրս տօնի. և յաւուրս ժամանակի։ 15 * ‖Եւ ասասջիք, Տ՟ն Ա՟Ծ մերոյ արդարութի է, և մեր ամօթ երեսաց. որպ՟ յաւուրս յայսմիկ առն Յուդայ՝ և բնակչաց Ե՟մի։ 16 * Եւ թագաւորաց մերոց՝ և իշխանաց մերոց՝ և քահանայից մերոց՝ և մարգարէից մերոց և հարցն մերոց առաջի Տ՟ն։ 17 * ‖Մեղաք առաջի Տ՟ն Ա՟Ծ մերոյ. և ոչ հաւատացաք՝ ապստամբեալք 'ի նմանէ։ 18 * Զի անհնազանդք եղեաք նմա. և ոչ լուաք ձայնի Տ՟ն Ա՟Ծ մերոյ գնալ ըստ հրամանաց Տ՟ն՝ զոր ետ առաջի մեր։ 19 * Յօրէ յորմէ եհան Տէր զհարսն մեր յերկրէն Եգիպտացւոց՝ և մինչև ցայսօր էաք անհնազանդք Տ՟ն Ա՟Ծ մերոյ՝ և խուսափեալք չլսել ձայնի նորա։ 20 * ‖Եւ պատեցան զմեօք չարիքն. և նզովքն՝ զոր կարգեաց Տ՟ր 'ի ձեռն Մովսէսի ծառայի իւրոյ՝ յաւուր յորում եհան զհարսն մեր յերկրէն Եգիպտացւոց. տալ մեզ զերկիր՝ որ

բղխէ

‖Վայր. 2. 6.

‖Դան. 9. 5.

‖2. Օրէ. 28. 15.

բղխէ զկաթն և զմեղր որպէս և այսօր։ *Եւ ոչ լուաք ձայնի Տն Այ մերոյ • 21 ըստ ամ բանից մարգարէից • զորս առաքեաց առ մեզ ։ *Եւ գնացաք 22 իւրաքանչիւր ըստ մտաց սրտի իւրոյ չարի • հարկել աստուածոց օտարաց • առնել չար առաջի Տն Այ մերոյ։

## Գլ։ Բ։

Եւ կացոյց Տր զբանս իւր՝ զոր խօսեցաւ ՚ի վերայ մեր • և ՚ի վերայ դատաւորացն մերոց՝ որք դատէինն զԻէլ • և ՚ի վերայ թագաւորաց մերոց • և ՚ի վր իշխանաց մերոց • և ՚ի վերայ առն Իէլի և Յուդայ։ 1 *Ածել ՚ի վերայ 2 մեր չարիս մեծամեծս • որք ոչ երբէք գործեցան ՚ի ներքոյ ամենայն երկնից• որպէս և արարաւ Իէլի •‖ ըստ գրեցելոցն յօրէնս Մովսէսի ։ *Ուտել մեզ 3 զմարմինս որդւոյ մերոյ• և առն զմարմինս դստեր իւրոյ ։ *Եւ մատնեաց 4 զմեզ ՚ի ստրկութի ամ թագաւորաց՝ որք շուրջ զմեօք էին • ՚ի նախատինս և յանապատ ՚ի մէջ ամ ժողովրդոց շուրջ ջանակի՝ ուր ցրուեաց զմեզ Տր անդր։ *Եւ եղեաք ՚ի վայր՝ և ոչ ՚ի վեր • զի 5 մեղաք Տն Այ մերում առ ՚ի չլսելոյ ձայնի նորա։ *‖Տն Այ մերոյ արդա 6 րութի • և մեզ՝ և հարց մերոց ամօթ երեսաց • որպէս և յաւուր յայսմիկ։ *Զոր խօսեցաւ Տր ՚ի վերայ մեր զամ 7 զչարիսս զայսոսիկ՝ որք եկին ՚ի վերայ մեր ։ *Եւ ոչ աղաչեցաք զերեսս Տն 8 դառնալ իւրաքանչիւր ՚ի խորհրդոց սրտի իւրոյ չարի ։ *Եւ զարթեաւ Տր ՚ի 9 վերայ չարեացն • զորս զարթոյց Տր ՚ի վր մեր • զի արդար է Տր յամի գործս իւր՝ զոր պատուիրեաց մեզ։ *Եւ ոչ 10 լուաք ձայնի նորա երթալ զհետ հրամանաց Տն՝ զոր ետ առաջի մեր ։

*‖Եւ արդ՝ Տէր Աճ մեր՝ որ հաներ 11 զժողովուրդ քո յերկրէն եգիպտացւոց հզօր ձեռամբ՝ նշանօք և արուեստիւք՝ և մեծամեծ զօրութեք՝ և բարձր բազկաւ • և արարեր քեզ անուն որպէս յաւուր յայսմիկ ։ *Մեղաք՝ ամպարշ 12 տեցաք՝ անիրաւեցաք Տէր Աճ յամ իրաւունս քո։ *Դարձցի սրտմտութի 13 քո ՚ի մէնջ • զի մնացաք նուազք ՚ի մէջ հեթանոսաց՝ ուր ցրուեցեր զմեզ անդր։ *Լուր Տր աղօթից մերոց և խնդրուածոց մերոց • և փրկեա զմեզ վասն 14 քոյ • և տուր մեզ շնորհս առաջի գերչաց մերոց ։ *Զի ծանիցէ ամ երկիր՝ 15 թէ դու ես Տր Աճ մեր • զի անուն քո կոչեցաւ ՚ի վր Իէլի և ՚ի վր ազգի նր ։ *‖Տր նայեաց ՚ի տաճարէ սրբոյ քում 16 մէ • (և խորհեաց զմեզ •) խոնարհեցո

‖2. Օրէ. 28. 53. ‖Եր. 1.15. յամենայն ‖Դանի. 9.15. ‖2. Օրէ. 26. 15.

17 Տր զունկն քո՝ և լուր մեզ ։ *‖Բաց զաչս քո՝ և տես •‖ զի ոչ եթէ մեռեալք ՚ի դժոխս՝ որոց առան ոգիք ՚ի միջոյ նց, տացեն զփառաւորութի և իրաւունս 18 Տն ։ *Այլ անձինք տրտմեալք՝ յանհնարին տրտմութենս• որք գնան կորացեալք՝ և հիւանդացեալք՝ և աչք առ կայծեալք՝ և անձինք քաղցեալք տայցեն քեզ փառս և զարդարութի ։ 19 *Տր ոչ եթէ առ իրաւանց հարցն մերոց • և թագաւորաց մերոց արկանեմք գութս առաջի քո Տր Աճ մեր ։ 20 *Զի ածեր զսրտմտութի քո՝ և զբարկութի քո ՚ի վր մեր • որպէս խօսեցար ՚ի ձեռն ծառայից քոց մարգարէից ։ 21 *Այսպէս ասէ Տր՝ խոնարհեցուցէք զպարանոցս ձեր • և հարկեցէք արքային բաբելացւոց • և նստարուք յերկ 22 րին՝ զոր ետու հարցն ձերոց ։ *Եւ եթէ ոչ լուիցէք ձայնի Տն հարկել արքային բաբելացւոց • պակաս արարից ՚ի քաղաքացն Յուդայ և արտաքոյ 23 Եէմի ։ *Զձայն ուրախութե • և զձայն ցնծութե • զձայն փեսայի՝ և զձայն հարսին • և եղիցի ամ երկիր անապատ 24 ՚ի բնակչաց ։ *Եւ ոչ լուաք ձայնի քում հարկել արքային բաբելացւոց • և կացուցեր զբանս քո՝ զոր խօսեցար ՚ի ձեռն ծառայից քոց մարգարէից • հանել զոսկերս թագաւորացն մերոց • և զոսկերս հարցն մերոց ՚ի տեղւոջէ իւր 25 եանց ։ *Եւ ահա անկեալ կան ՚ի տօթի տուընջեան • և ՚ի ցուրտ գիշերոյ • և մեռան ՚ի ցաւս չարաչարս ՚ի սով՝ և ՚ի 26 սուր՝ և ՚ի գերութի ։ *Եւ արարեր զտաճարն քո՝ յորոյ վերայ կոչեցաւ անուն քո՝ որպէս յաւուր յայսմիկ • վս չարութե տանն Իէլի , և տանն Յուդայ։ 27 *Եւ արարեր ընդ մեզ Տէր Աճ մեր ըստ ամենայնի հեզութե քում՝ և ըստ 28 ամի մեծի գթութե քոյ։ *Որպէս խօսեցար ՚ի ձեռն ծառայի քոյ Մովսէսի՝ յաւուր պատուիրելոյն քոյ նմա գրել զօրէնս քո առաջի որդւոցն Իսրայէլի ։ 29 *‖Եւ ասել՝ եթէ լուիցէք ձայնի իմում • եթէ ոչ շփոթն մեծ և յոյժ դարձցի փոքրկութի ՚ի մէջ ազգաց՝ 30 ուր ցրուեցից զձեզ անդր ։ *Զի գիտեմ՝ եթէ ոչ լուիցեն ինձ • զի ժողովուրդ խստապարանոց է • և դարձուցանեն զսիրտս իւրեանց յերկրին պան 31 դխտութե իւրեանց ։ *Եւ ծանիցեն՝ թէ ես եմ Տր Աճ նց՝ և տաց նոցա 32 զսիրտ՝ և ականջս լսելոյ ։ *Եւ օրհնեսցեն զիս յերկրի գերութե իւրեանց • 33 և յիշեսցեն զանուն իմ։ *Եւ դարձցին ՚ի խստութե պարանոցի իւրեանց • և յիրաց չարեաց իւրեանց • զի յիշեսցեն

‖Եսայ. 63.15. ‖Եսայ. 17.17. և 64.9. ‖Սաղ. 113.17. ‖Ղևտ. 26.14. 2. Օրէ. 28. 15.

ցեն զճանապարհս հարցն իւրեանց մեղուցելոց առաջի իմ: 34 *Եւ դարձուցից զնոսա յերկիրն՝ զոր երդուայ տալ հարցն նոցա աբրահամու՝ և իսահակայ՝ և յակոբու. և տիրեսցեն նմա. և բազմացուցից զնս՝ և ոչ նուազեսցին: 35 *Եւ հաստատեցից նոցա ուխտ յաւիտենական լինել ինձ նոցա յԱԾ. և նոքա եղիցին ինձ 'ի ժողովուրդ. և ոչ ևս խախտեցից զժողովուրդ իմ զԻէլ յերկրէն՝ զոր ետու նոցա:

ԳԼ: Գ.

1 Տէր ամենակալ՝ ԱԾ Իէլի՝ անձինք նեղեալք՝ և ոգիք ձանձրացեալք աղաղակեն առ քեզ: 2 *Լուր Տր՝ և ողորմեա՛ց. զի ԱԾ ողորմած ես. և ողորմեա՛ց՝ զի մեղաք առաջի քո: 3 *Զի դու բնակեալ ես յաւիտեան. և մեք կորստականք յաւիտեանս: 4 *Տր ամենակալ՝ ԱԾ Իէլի՝ լո՛ւր աղօթից մեռելոյն Իէլի. և որդւոցն մեղուցելոց առաջի քո. որք ոչ լուան ձայնի Տն ԱԾոյ իւրեանց. և պատեցին զմեզ չարիք: 5 *Մի՛ յիշեր զանիրաւութիւս հարցն մերոց. այլ յիշեա՛ զձեռն քո՝ և զանուն քո 'ի ժամանակի յայսմիկ: 6 *Զի դու Տր ԱԾ մեր. և օրհնեսցուք զքեզ Տր: 7 *Զի վասն այնորիկ ետուր զերկիւղ քո 'ի սիրտս մեր կարդալ զանուն քո. և օրհնեսցուք զքեզ 'ի գերութեան մերում. զի դարձուցաք 'ի սրտէ մերմէ զամ անօրէնութիւս հարցն մերոց մեղուցելոց առաջի քո: 8 *Ահաւասիկ մեք այսօր 'ի գերութեան մերում. ուր ցրուեցեր զմեզ այսօր 'ի նախատինս՝ և 'ի նզովս՝ և 'ի պարտիս ըստ ամ անիրաւութեց հարց մերոց՝ որք ապստամբեցան 'ի Տէ ԱԾ մերմէ: 9 *Լուր Իէլ զպատուէրս կենաց. ունկնդիր լեր ճանաչել զիմաստութի: 10 *Զի՞նչ է Իէլ. զի յերկիրդ թշնամեաց ես: 11 *Հնացար յերկրի օտարութե. խառնակեցար ընդ դիակունս. համարեցար ընդ իջեալս 'ի դժոխս: 12 *Թողեր զերկիրն իմաստութե: 13 *Եթէ 'ի ճանապարհն ԱԾոյ գնացեալ էիր, բնակէիր խաղաղութբ յաւիտեանս ժամանակաց: 14 *Ուսի՛ր՝ ո՞ւր է իմաստութի. ո՞ւր է զօրութի: ո՞ւր է հանճար, ճանաչել միանգամայն՝ թէ ո՞ւր են կեանք երկայնակեացք. ո՞ւր է լոյս աչաց՝ և խաղաղութի: 15 *Ո՞ եգիտ զտեղի նր. ո՛ եմուտ 'ի գանձս նր: 16 *Ո՞ւր են իշխանք հեթանոսաց՝ և որք տիրեն գազանաց երկրի: 17 *Որք ընդ թռչունս երկնից խաղային: 18 *Եւ գանձէին զարծաթ և զոսկի՝ յոր յուսացան մարդիկ. և ոչ գոյր բաւ ստացուածոց նց. և որք գործեն զարծաթն՝ և հոգան. և ոչ գոն հանգամանք գործոց նց: 19 *Ապականեցան՝ և 'ի դժոխս իջին. և այլք փոխանակ նոցա կանգնեցան: 20 *Երիտասարդք տեսին զլոյս. և բնակեցան յերկրի. և զճանապարհս իմաստութե ոչ ծանեան: 21 *Եւ ոչ 'ի միտ առին զշաւիղս նր. և ոչ կալին 'ի վերայ նր. որդիք նց 'ի ճանապարհէ նոցա հեռի եղեն: 22 *Ոչ լու եղև 'ի քանան. և ոչ երևեցաւ 'ի թեման: 23 *Եւ ոչ որդիքն հագարու խնդրեն զիմաստութի. վաճառականք մերանայ՝ և թեմանայ առասպելախօսք՝ և քննիչք իմաստութե. զճանապարհ իմաստութե ոչ ծանեան. և ոչ յուշ եղեն նոցա շաւիղք նորա: 24 *Ով Իէլ որպէս զի մեծ է տունն ԱԾոյ, և ընդարձակ է տեղի ստացուածոց նորա: 25 *Մեծ է՝ և ոչ գոյ բաւ. բարձր և անչափ: 26 *Անդ ծնան սկայքն անուանիք 'ի սկզբանէ եղեալք մեծամեծք. հմուտք պատերազմաց: 27 *Ոչ եթէ զնս ընտրեաց ԱԾ. և ոչ զճանապարհս իմաստութե ետ նոցա: 28 *Եւ կորեան առ 'ի չգոյէ իմաստութե՝ և սատակեցան վասն անմտութե իւրեանց: 29 *Ո՞ ել յերկինս՝ և էառ զնա՝ և իջոյց զնա յամպոց: 30 *Ով էանց յայնկոյս ծովուն՝ և եգիտ զնա. և բերցէ զնա ընտիր ոսկւոյ: 31 *Ոչ ոք՝ որ գիտէ զճանապարհս նորա. և ոչ՝ որ զմտաւածիցէ զշաւիղս նր: 32 *Այլ որ գիտէն զամ՝ ճանաչէ զնա. եգիտ զնա իմաստութբ իւրով. և որ կազմեաց զերկիր յաւիտեանս ժամանակաց. ելից զնա անասնովք՝ և չորքոտանեօք: 33 *Որ առաքէ զլոյս՝ և գնայ. կոչեաց զնա՝ և նա լուաւ նմա դողութբ: 34 *Եւ աստեղք ծագեցին յիւրաքանչիւր պահպանութե՝ և ուրախ եղեն: 35 *Կոչեաց զնոսա՝ և ասեն. ահաւասիկ կամք. ծագեցին ուրախութբ արարչի իւրեանց: 36 *Սա ԱԾ մեր՝ ընդ որում ոչ համարեսցի այլ: 37 *Եգիտ զամենայն ճանապարհս իմաստութե. և ետ զնա յակոբու ծառայի իւրոյ. և Իէլի սիրելւոյ 'ի նմանէ: 38 *Յետ այսորիկ յերկրի երևեցաւ՝ և ընդ մարդկան շրջեցաւ:

ԳԼ: Դ.

1 Այս են գիրք հրամանաց ԱԾոյ. և օրէնք՝ որք կան յաւիտեան. և ամենեքին որք ընդունին զնա 'ի կեանս. և որք թողուն զնա, մեռցին: 2 *Դարձ յակոբ՝ և բուռն հար զնմանէ

Margin notes: զմերոց մեր յամ անօրէնութեանց; շղթեարն; 'ի ձեռնա պարհէ իւրեանց

նէ, ընդ ծագումն առաջի լուսոյ նորա։ 3 *Մի տար այլում զփառս քո՝ և մի զօգուտս քո ազգի օտարոտւոյ։ 4 *Երանի է մեզ Իսրայէլ․ զի հաճոյքն Ա՟Յ ծանօթք մեր են։ 5 *Քաջալերեա՛ց ժողովուրդ իմ․ յիշեա՛ Իսրայէլ։ 6 *Զի վաճառեցայք յազգս՝ և ոչ ՚ի կորուստ․ փոխանակ զի բարկացուցիք դուք զԱ՟Ծ մատնեցայք հակառակորդաց։

7 *Բանզի զայրացուցէք զարարիչ ձեր՝ 8 զոհեցէք դիւաց՝ և ոչ Ա՟Յ։ *Մոռացայք զկերակրիչն ձեր, զԱ՟Ծ յաւիտենական․ տրտմեցուցէք և զդայեակն ձեր զԵրուսաղէմ։ 9 *Զի ետես զեկեալն ՚ի վ՟ր ձեր զբարկութիւն յԱ՟Յ՝ և ասէ․ լուարո՛ւք պանդուխտք սիոնի․ զի եած ՚ի վերայ իմ Տ՟ր զսուգ մեծ։ 10 *Տեսի զգերութիւն ուստերաց՝ և դստերաց իմոց․ զոր եած ՚ի վերայ նոցա յաւիտենականն։ 11 *Սնուցի զնոսա ուրախութ՟բ․ և յուղարկեցի զնոսա լալով՝ և սգալով։ 12 *Մի ոք ուրախ լիցի այրեւոյս՝ որ մնացի միայնացեալ ՚ի բազմաց․ թափուր եղէ վ՟ն բազում մեղաց որդւոց իմոց․ զի խոտորեցան յօրինաց Ա՟Յ։ 13 *Զիրաւունս նորա ոչ ծանեան․ և ոչ գնացին ՚ի ճանապարհս պատուիրանաց Ա՟Յ․ և ոչ ՚ի շաւիղս խրատու արդարութե նորա ելին։

14 *Եկեսցեն պանդուխտք սիոնի․ և յիշեսցեն զգերութիւն ուստերաց՝ և դստերաց իմոց․ զոր եած ՚ի վերայ նոցա յաւիտենականն։ 15 *Եած ՚ի վ՟ր նոցա ազգ հեռաւոր․ ազգ լիրբ՝ և այլալեզու։ 16 *Որք ոչ ակն ածէին ծերոյն․ և ոչ ողորմէին տղայոյն․ տարան զսիրելիս այրւոյն՝ և ՚ի դստերաց թափուր արարին զմիայնեալս։ 17 *Եւ ես՝ զինչ էի ձեռնհաս օգնել ձեզ։ 18 *Որ եած զչարիսն ՚ի վ՟ր, փրկեսցէ զձեզ ՚ի ձեռաց թշնամեաց ձերոց։ 19 *Գնացէք որդեակք, գնացէ՛ք․ զի ես մնացի աւերակ։ 20 *Մերկացայ զպատմուճան խաղաղութե․ և զգեցայ զքուրձ խնդրուածոյ իմոյ․ աղաղակեցից առ յաւիտենականն յաւուրս իմ։ 21 *Քաջալերեցարո՛ւք որդեակք․ գոչեցէ՛ք առ Ա՟Ծ․ և փրկեսցէ զձեզ ՚ի բռնութէ ձեռաց թշնամեաց։ 22 *Զի ես յուսացայ ՚ի յաւիտենականն վասն փրկութե ձերոյ․ և եկն ինձ ուրախութիւն ՚ի սրբոյն ՚ի վ՟ր ողորմութեն․ որ եկեսցէ ձեզ ընդ հուպ ՚ի յաւիտենականէ փրկչէ ձերմէ։ 23 *Զի յուղարկեցի զձեզ լալով՝ և սգով․ և տացէ ինձ Ա՟Ծ զձեզ ցնծութ՟բ և ուրախութ՟բ յաւիտենանս։ 24 *Զի որպէս այժմ տեսին պանդուխտքն սիոնի զգերութիւն ձեր․ նոյնպէս տեսցեն ընդ հուպ զԱ՟Յ զփրկութիւն ձեր՝ որ եկեսցէ ՚ի վերայ ձեր փառօք մեծօք՝ և լուսաւորութ՟բ յաւիտենականին։ 25 *Որդեակք՝ երկայնամիտք եղերո՛ւք ՚ի վերայ բարկութեն հասելոյ ձեզ յԱ՟Յ․ հալածեաց զքեզ թշնամին քո․ և տեսցես զկորուստ նորա ընդ հուպ․ և ելցես ՚ի վերայ պարանոցի նորա։ 26 *Փափկասունք իմ գնացին ՚ի ճանապարհս խիստս՝ վարեցան իբրև զհօտ յափշտակեալ ՚ի թշնամեաց։ 27 *Քաջալերեցարո՛ւք որդեակք․ և գոչեցէ՛ք առ Ա՟Ծ․ զի եղիցի ձեզ յիշատակ ՚ի վարչէն։ 28 *Զի որպէս եղեն ձեր միտք մոլորեալք յԱ՟Յ․ տասնպատիկ եղերո՛ւք դառնալ և խնդրել զնա։ 29 *Զի որ եածն ՚ի վերայ ձեր չարիս, ածցէ ՚ի վերայ ձեր զյաւիտենական ուրախութիւն հանդերձ փրկութեն ձերով։ 30 *Քաջալերեա՛ց Երուսաղէմ, մխիթարել զքեզ որ անուանեացն զքեզ։ 31 *Եղո՛ւկ որ չարչարեացն զքեզ․ և որք խնդացին ընդ կործանումն քո։ 32 *Եղո՛ւկք են քաղաքքն՝ որոց ծառայեցին մանկունք քո․ և եղուկ է՝ որ ընկալաւ զորդիսն քո։ 33 *Զի որպէս խնդաց նա ՚ի վերայ կործանմանն քոյ՝ և ուրախ եղև յանկանելն քում․ նոյնպէս տրտմեսցի ՚ի վերայ իւրոյ աւերածին։ 34 *Եւ բարձից ՚ի նմանէ զուրախութիւն բազում խրախճանութե․ և դարձուցից ՚ի սուգ զպերճութիւն նր։ 35 *Եկեսցէ ՚ի վերայ նորա հուր ՚ի յաւիտենականէն աւուրս բազումս․ և եղիցի բնակութիւն դիւաց ՚ի բազում ժամանակս։ 36 *Հայեա՛ց ընդ արևելս Երուսաղէմ․ և տես զեկեալ ուրախութիւն քեզ յԱ՟Յ։ 37 *Ահաւադիկ գան որդիքն քո՝ զորս յուղարկեցեր․ գան ժողովեալք յարևելից մինչ ՚ի մուտս արևու բանիւ սրբոյն․ խնդացեալք փառօքն Ա՟Յ։

## Գլ. Ե.

1 Մերկեա՛ Երուսաղէմ զհանդերձ սգոյ և չարչարանաց քոց․ և զգեցի՛ր զվայելչութիւն փառացն Ա՟Յ ՚ի յաւիտենան։ 2 *Եւ ա՛րկ զքև կրկնոցն արդարութե յԱ՟Յ․ դի՛ր խոյր ՚ի գլուխ քո՝ զփառաց յաւիտենականին։ 3 *Զի ցուցցէ Ա՟Ծ ՚ի ներքոյ երկնից զամենայն լուսաւորութիւն քո։ 4 *Եւ կոչեսցի քեզ անուն յԱ՟Յ ՚ի յաւիտեան․ խաղաղութիւն արդարութե՝ և փառք ա՟ծպաշտութե։ 5 *Արի՛ Երուսաղէմ․ և կա՛ց ՚ի բարձու․ և հայեա՛ց ընդ արևելս․ և տես ժողովեալ զորդիսն քո յարևելից մինչև յարևմուտս՝ բանիւ սրբոյն։

զուար-

զուարձացեալս յԱՅ յիշատակօք։
6 *Զի ելին ՚ի քէն հետևակք՝ վարեալք ՚ի թշնամեաց. և ածցէ զնոսա առ քեզ ԱԾ ամբարձեալս փառօք. իբրև զաթոռ թագաւորութեան։ 7 *Զի հրաման ետ ԱԾ խոնարհիլ ամենայն լերանց բարձանց. և բլրոց մշտնջենաւորաց. և լնուլ ձորոց ՚ի հարթութիւն երկրի. զի գնասցէ իէլ զգուշութբ փառացն ԱՅ։ 8 *Եւ հովանի լիցին նմա ամենայն անտառք. և ամ փայտ անուշութեան իսրայէլի հրամանաւ ԱՅ։ 9 *Զի առաջնորդեսցէ ԱԾ իսրայէլի խնդութբ՝ լուսով փառաց իւրոց հանդերձ ողորմութբ՝ և արդարութբ ՚ի նմանէ։

## ԳԼ. Զ.

Օրինակ թղթոյն. զոր առաքեաց Երեմիաս վարեալս գերութե ՚ի բաբելոն ՚ի թագաւորէն բաբելացւոց. զի պատմեսցէ նոցա ըստ որոյ պատուիրեցաւ նմա յԱՅ։

Երեմ. 25.9.

1 Վասն մեղաց, զորս մեղայք առաջի ԱՅ, վարիք ՚ի բաբելոն գերեալք ՚ի նաբուգոդոնոսորայ արքայէ բաբելացւոց։ 2 *Մտեալք այսուհետև ՚ի բաբելոն. եղիջիք անդ ամօք բազմօք. և ժամանակօք երկարագունիւք՝ մինչև յազգս եօթն. իսկ զկնի այնորիկ վերաբերիցեմ զձեզ անտի հանդերձ խաղաղութբ։ 3 *Իսկ այժմ տեսանիցէք ՚ի բաբելոն զաստուածս ոսկեղէնս՝ և արծաթեղէնս՝ և քարեղէնս՝ և փայտեղէնս ՚ի յուս բառնիլ՝ ցուցանելով զերկիւղ հեթանոսաց։

Եսայ. 44.10.

4 *Արդ՝ տեսէք՝ մի և դուք նմանիջիք օտարելոցն օտարաց. և ահաւջիք. և ահ զձեզ յափշտակեսցէ նոքօք։ 5 *Տեսեալ այնուհետև ամբոխ ՚ի թիկանց և ՚ի դիմաց երկրպագելով։ ասասցէք ՚ի սիրտս ձեր. քեզ պարտ է երկիր պագանել Տէր։ 6 *Զի հրեշտակ իմ ընդ ձեզ է. զի ես ինքնին խուզեցից զոգիս ձեր։ 7 *Զի լեզու նոցա յօրինեալ ՚ի հիւսանէ. ինքն ևս ոսկեալ և արծաթեալ՝ սուտք են, և ոչ կարեն խօսիլ։ 8 *Եւ որպէս կուսի սիրողի պաճուճանս. այսպէս առեալ ոսկեաւ ճարտարապետեցան։
9 *Զպսակս ստուգիւ ոսկեղէնս ունին ՚ի վերայ գլխոց իւրեանց աստուածք նոցա. ուստի հատանեն քահանայքն յայնցանէ զոսկիս, և զարծաթս. և բաժանեն զայնս ներ ինքեանց։
10 *Տան ևս յայնմանէ առաջի անկելոցն. և զպոռնիկս զարդարեն. և վերստին իբրև առցեն զայն ՚ի պոռնկաց, զարդարեն զաստուածս իւրեանց։ 11 *Իսկ այնքիկ ազատեսցին ՚ի ժանգոյ և ՚ի ցեցէ։ (ոչ ապա֊) 12 *Բայց ծածկեալ զնոսա համ դերձիւ ծիրանեաւ. թօթափեն զերեսս նոցա վասն մրրոյ տանն. որ է յոլովագոյն ՚ի մէջ նոցա։ 13 *Զգաւազան իսկ ունի իբրև զմարդ. որպէս դատաւոր գաւառի. որ առ ինքն զմեղանչօղն ոչ սպանանէ։ 14 *Ունի ևս ՚ի ձեռին զսուր. և զկացին. սակայն զինքն ՚ի պատերազմէ և յաւազակաց ոչ զերծուսցէ։ ուստի ձեզ յայտնի լինին. զի ոչ են աստուածք։ 15 *Ապաւրեմն մի երկնչիցիք ՚ի նոցանէ՝ զի որպէս անօթ մարդոյ մանրեցեալ անշահ երևի. այնպիսիք են և աստուածք նոցա։
16 *Նստուցանողաց նոցա ՚ի տան, աչք նոցա լիք են մրրով ոտիւք ՚ի ներս գնացողաց։ 17 *Եւ որպէս ոք՝ որ զթագաւոր գթեցուցանէ. շրջափակեալք են դրունք։ կամ որպէս առ գերեզման առբերեալ զմեռեալ. այսպէս պահպանեն քահանայք զդուրս փականօք և նգօք. զի մի յաւազակաց կողոպտեսցին։ 18 *Ճրագունս լուցանեն նոցա՝ և մանաւանդ զբազումս. յորոց զոչ մի տեսանել կարեն. բայց են իբրև զգերան ՚ի տան։
19 *Իսկ սիրտք նոցա ասեն լեզուեալ զօձս. որք յերկրէ են. յորժամ ուտեն զնա՝ և զհանդերձ նոցա. և ոչ զգան։ (լեզուէիլ ... յօձից)
20 *Սևաւք լինին երեսք նոցա ՚ի մխոյ. որ ներ տանն է։ 21 *՚Ի վերայ մարմնոյ նոցա. և ՚ի վերայ գլխոց նոցա թռչին գիշերահաւք. և ծիծեռունք. և հաւք. և նմանապէս դաղտադուլք։ 22 *Ուստի գիտասջիք՝ զի ոչ են աստուածք. մի ուրեմն երկնչիջիք ՚ի նոցանէ։
23 *Զոսկին ևս զոր ունին, առ տեսս է. եթէ ոչ այլոք մաքրեսցեն զժանգն ոչ փայլեսցին. ոչ ևս երբ հալեսցին զգասցեն։ 24 *Յամէ գնոյ գնեալք են. ներ որոց հոգի ոչ ներգոյ ինքեանց։

Եսայ. 46.6.

25 *Թարց ոտից յուսս բառնին. երևեցուցանելով զարհամարհութիւնս նոցա մարդկան. զի զամօթ կրեսցեն՝ ոյք պաշտեն զնոսա։ 26 *Սա այնորիկ թէ կործանեսցին յերկիր՝ յինքեանց ոչ յառնեն. և ոչ թէ ոք զնա կանգնեսցէ ուղիղ՝ ՚ի ձեռն ինքեան կանգնեսցի։ այլ որպէս մեռելոյ՝ նուէրք նոցա նոցին առդնիցին։ 27 *Զզոհս նոցա վաճառեն քահանայք նոցա՝ և յօրինան. նմանապէս և կանայք նոցա լիզանօղք. որ և ոչ հիւանդի. որ և ոչ մուրողի զեր ինչ տան։ 28 *Պատարագաց նոցա որդունք և զազրութիւնք հանդիպին։
Արդ՝ գիտասջիք յայսցանէ. զի ոչ

են աստուածք. մի՛ երկնչիք 'ի նոցանէ։

29 *Զի ուստի՞ կոչին աստուածք. քանզի կանայք առաջի են աստուածոց արծաթեղինաց՝ և ոսկեղինաց՝ և փայտեղինաց։ 30 *Եւ 'ի տան նոցա քահանայք նոցա նստին. ունելով զպատմուճանս հերձեալս. և զգլուխս՝ և զմօրուսս գերծեալս. որոց գլուխք մերկ են։ 31 *Գոռան իսկ աղաղակելով ընդդէմ աստուծոց իւրեանց. իբրև ներ ընթրիսում մեռելոյ։ 32 *Զզգեստս նոցա 'ի բաց առնուն քահանայք. և զզգեստաւորեն զկանայս իւրեանց՝ և զուստերս իւրեանց։ 33 *Եւ ո՛չ, թէ այլ ինչ չարիս կրեն յայլմէ ումեքէ. և ո՛չ թէ այլ ինչ բարիս՝ կարեն հատուցանել. և ո՛չ զթագաւոր կացուցանել կարեն. և ո՛չ բառնալ։ 34 *Նմանապէս և ո՛չ տալ զփարթամութիւն կարեն. և ո՛չ զչար վերահատուցանել։ թէ ոք նոցա զուխտ ուխտիցէ, և ոչ վերատորիցէ. և ո՛չ զայն վերախնդրիցեն։

35 *Զմարդ 'ի մահուանէ ո՛չ ազատեն. և ո՛չ զտկարն 'ի կարողագունէն զերծուցանեն։ 36 *Զմարդ կոյր առ տեսութիւն ո՛չ վերականգուցանեն. 'ի հարկաւորութենէ զմարդ ո՛չ փրկեսցեն։

37 *Զայրւոյ ո՛չ ողորմեսցին. և ո՛չ որբոց բարերարեսցեն։ 38 *Քարանց լերանց նմանք են աստուածք նոցա փայտեղէնք՝ և քարեղէնք՝ և ոսկեղէնք՝ և արծաթեղէնք։ Իսկ որք պաշտեն զնոսա, ամաչեսցեն։ 39 *Արդ՝ զիա՞րդ վարկանելի է՝ կամ ասելի զնոսա գոլ աստուածս։ 40 *Զի դեռևս ինքեանց քաղդէացւոց ո՛չ պատուողաց զնոսա. որք յորժամ լուիցեն զհամր ո՛չ կարել խօսիլ՝ մատուցանեն առ բէլ՝ խնդրելով 'ի նմանէ զխօսիլ։ 41 *Զիա՞րդ կարեն զգալ՝ որք ո՛չ ունին զշարժումն. և ինքեանք երբ իմասցին, 'ի բաց թողցեն զնոսա։ զի զզգայարան ո՛չ ունին ինքեանք դիք նոցա։ 42 *Բայց կանայք շուրջպատեալք լարիւք ներ ճանապարհաց նստին. հրդեհեալք զոսկերս ձիթենեաց։ 43 *Իսկ յորժամ այլոք 'ի նոցանէ արտաքարշեալ յայլմէ ումեքէ ար տագնացողէ ննջեսցէ ընդ նմա. զմեր ձաւորուհի իւր թշնամանէ՝ եթէ նա ո՛չ իցէ արժանապէս պատուեալ որպէս ինքն. և ո՛չ լար նորա խզեալ իցէ։

44 *Զի ամենեքեան որք նոցա լինին, սուտք են։ զիա՞րդ վարկանելի, կամ ասելի է զնոսա գոլ աստուածս։

45 *Ճարտարաց իսկ, և յոսկերչաց արարեալք են. ո՛չ այլ ինչ եղիցին. եթէ ոչ այն, զոր կամին գոլ քուրմքն։

46 *Որձեստաւորքն ևս ինքեանք՝ որք զայնս առնեն, ո՛չ են բազմաժամանակեայք։ ո՛չ երբէք ուրեմն կարեն այնք, որք են արհեստաւորեալք 'ի նոցանէ՝ գոլ աստուածք։ 47 *Բայց թողին զսուտս. և զնախատինս ապագայից ապառնեաց։ 48 *Զի յորժամ վերադայցէ նոցա պատերազմ և չարիք. խորհին քուրմքն առ ինքեանս, ուրանօր զինքեանս թաքուսցեն հանդերձ նոքօք։ 49 *Արդ՝ զիա՞րդ վարկանիլ պարտիցին եթէ աստուածք են, որք և ո՛չ 'ի պատերազմէ զինքեանս փրկեն. և ո՛չ 'ի չարեաց զինքեանս ապրեցուցանեն։ 50 *Զի երբ են փայտեղէնք. ոսկիապատեալք, և արծաթապատեալք. գիտասցի այնուհետև. զի սուտք են։ 'ի հանուրց ազգաց և թագաւորաց. որք յայտնեսցին՝ զի ո՛չ են աստուածք։ այլ գործք ձեռաց մարդկան. և ոչինչ Այ գործ ընդ նոսա։

51 *Ուստի ուրեմն ծանուցեալ է. զի ո՛չ են աստուածք. այլ գործք ձեռաց մարդկան. և ոչինչ Այ գործ ներ նոցա է։ 52 *Զթագաւոր գաւառի ո՛չ յարուցանեն՝. և ո՛չ զանձրև մարդկան տայցեն։ 53 *Եւ զիրաւունս ո՛չ զանազանեն։ և ո՛չ զգաւառս ազատեն 'ի զրկանաց. քանզի ոչինչ կարեն. որպէս եղջերուկ 'ի մէջ երկնի և երկրի։

54 *Զի և յորժամ ներանկցի հուր 'ի տուն դից փայտեղինաց. արծաթեղինաց՝ և ոսկեղինաց. քուրմքն իսկ նոցունց փախիցեն, և ազատեսցին. իսկ ինքեանք իբրև զգերանս 'ի մէջ նորա այրեսցին։ 55 *Բայց թագաւորի՝ և պատերազմի ո՛չ ընդդիմասցին։ արդ՝ զիա՞րդ վարկանելի է՝ կամ վերընդունելի, եթէ աստուածք են։

56 *Ոչ 'ի գողոց՝ և ո՛չ յաւազակաց զինքեանս ազատեսցեն աստուածք փայտեղէնք՝ և քարեղէնք՝ և արծաթապատեալք՝ և ոսկեալք։ որովք այսոքիկ որք հզօրագոյնք են, 57 *Ոսկի՝ և արծաթ՝ և զգեստ. որով ծածկեալք են, 'ի բաց առցեն 'ի նոցանէ. և գնասցեն. և ո՛չ ինքեանց զօժանդակութիւն բերցեն։ 58 *Որովհետև բարւոք է գոլ թագաւոր՝ ցուցանող զզօրութիւն իւր. կամ անօթ 'ի տան շահեկան. որով պարծեսցի՝ որ ստանայ զնա. կամ դուռն 'ի տան՝ որ պահէ՝ որք ներ ինքեան են. քան աստուածքն սուտք։

59 *Արեգակն իսկ, և լուսին. և լուսաւորք երբ լիցին պայծառք. և արկեալք առ շահեկանութիւն, ենթ լսեն։

60 *Նմանապէս և փայլակն յորժամ երևեսցի, արտափայլեալ է։ նոյն ինքն իսկ և հողմն նամենոյն գաւառումն շնչէ։

*Եւ

61 *Եւ ամպք՝ որոց յորժամ հրամայեսցի Ա՟Յ շրջագայիլ՝ զամենահանուր զօլորտս բազմակատարեն՝ որ հրամայեալ է: 62 * Զի հուր առաքեալ 'ի վերուստ առ 'ի ծախել զլերինս և զանտառս. առնէ, զոր հրամայեալ է նմա: Իսկ այսոքիկ ոչ տեսակօք՝ և ոչ զօրութեամբ միոյ 'ի նոցանէ նմանք են:

63 * Ուստի և ոչ վարկանելի է. և ոչ ասելի զնոսա գոլ աստուածս. երբ ոչ կարեն, և որ և ոչ զդատաստան դատել. և ոչ զիր ինչ առնել մարդկան: 64 * Գիտացեալք այսուհետև զի ոչ են աստուածք. ոչ ուրեմն երկնչիջիք 'ի նոցանէ: 65 * Զի և ոչ զթագաւորս անիծանիցեն, նաև ոչ օրհնեսցեն: 66 * Զնշանս ևս յերկինս հեթանոսաց ոչ ցուցանեն. նաև ոչ իբրև զարեգակն ճառագայթեսցեն. և ոչ լուսաւորեսցեն իբրև զլուսին:

67 * Գազանք լաւագոյնք են քան զնոսա. ույք կարեն փախչել ընդ հովանովի: և օժանդակել ինքեանց:

68 * Ո՛չ իւիք այսուհետև եղանակաւ մեզ է բացայայտ՝ զի են աստուածք:

69 * Զի որպէս ներ սեխենոցաց սարսուռն ոչինչ պահէ: այսպէս են աստուածք նոցա փայտեղէնք՝ և արծաթեղէնք՝ և ոսկեղէնք: 70 * Նոյնով եղանակաւ և ներ պարտիզոջ փուշ սպիտակ. 'ի վերայ որոյ ամ՟ հաւ նստի. նմանապէս և մեռելոյ 'ի բաց ձգեցելոյ ներ խաւարաց նմանք են աստուածք նոցա փայտեղէնք. և ոսկեալք և արծաթեալք: 71 * Որ և 'ի ծիրանւոյ և յորդանէ. զորս 'ի վերայ սոսկեն. գիտասջիք այսուհետև. զի ոչ են աստուածք: Ինքեանք իսկ վկնի ամենեցուն ուտին. և եղիցին նախատինք ներ գաւառում: 72 * Բարեգոյն է մարդ արդար. որ ոչ ունի ձուլածուս. զի եղիցի տարակաց 'ի նախատանաց:



Եւ տեսի, և ահա հողմ վերացեալ գայր 'ի հիւսիսոյ · և ամպ մեծ 'ի նմա · Եզեկ · 1 · 4 ·



Այսպէս ասէ Տ՟ր Տ՟ր ոսկերացդ այդոցիկ · ահաւասիկ ածեմ 'ի ձեզ ոգի շունչ կենաց · Եզեկ · 37 · 5 ·

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵԶԵԿԻԷԼԻ·

## Գլուխ Առաջիներորդ։



Ի ԵՂԵՒ· ՅԱՄԻՆ Ե-1 րեսներորդի յամսեանն չորրորդի · որ օր հինգ էր ամսոյն · և ես էի 'ի մէջ գերութեանն ‖ առ ափն քոբար գետոյ · և բացան երկինք · և տեսի տեսիլ զԱ՟յ ։ 2 * Որ օր հինգ էր ամսոյն · այն ամ հինգերորդ էր գերութեանն յովակիմայ արքայի ։ 3 * Եւ եղև բան Տ՟ն առ եզեկիէլ քահանայ՝ որդի բուզեայ · յերկրին քաղդէացւոց 'ի վերայ քոբար գետոյ ։ և անդ եղև ձեռն Տ՟ն 'ի վերայ իմ ։ 4 * Եւ տեսի՝ և ահա հողմ վերացեալ գայր 'ի հիւսիսոյ · և ամպ մեծ 'ի կողման նմա · և լոյս շուրջ զնովաւ · և հուր փայլատակիւր 'ի նմանէ · և 'ի մէջ նորա իբրև զտեսիլ բազմագունի ականց՝ և ճառագայթք 'ի նմա ։ 5 * Եւ 'ի մէջ նորա կերպարանք չորից գազանաց ։ և այս տեսիլ նց · կերպարանք մարդոյ 'ի վ՟ր նոցա ։ 6 * Եւ չորք դէմք միոյ · և չորք 7 թևք միոյ միոյ 'ի նոցանէ ։ * Եւ բարձք նց բարձք ուղորդք · և ոտք նց թևաւորք էին · և կճղակք նց իբրև զկճղակս որթուց · և կայծակունք թօթափէին 'ի նոցանէ իբրև 'ի փայլատականց պղնձոյ ։ և թևք իւրեանց երագունք էին ։ 8 * Եւ ձեռն մարդոյ 'ի ներքոյ թևոց նոցա 'ի չորեսին կողմանս նց · և երեսք նոցա ։ 9 * Եւ թևք չորեցունց ընդ միմեանս թևակցէին ։ և զերեսս իւրեանց 'ի գնալն յետս ընդդէմ ոչ դարձուցանէին · իւրաքանչիւր համդէպ երեսաց իւրեանց գնային ։ 10 * Եւ կերպարանք երեսաց նոցա՝ կերպարանք մարդոյ՝ և կերպարանք առիւծու յաջմէ չորեցունց ։ և կերպարանք եզին , և կերպարանք արծուոյ 'ի ձախմէ չորեցունց ։ 11 * Եւ այս կերպարանք նց ·

‖ Այլ · 3 · 23 · և 10 · 20 ·

և ամպ մեծ 'ի նմ՟

նց . Թեւք նոցա տարածեալք 'ի վերուստ չորեցունց· իւրաքանչիւր երկու երկու՝ խառնեալք ընդ միմեանս ։ Եւ երկու երկու ծածկէին 'ի վերուստ ըզ մարմինս իւրեանց ։ 12 * Եւ իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւրոց գնային ։ յոր կողմն դիմէր հողմն գնային՝ եւ յետս ընդդէմ՝ ոչ դառնային 'ի գնալն իւրեանց ։ 13 *Եւ 'ի մէջ գազանացն տեսիլ իբրեւ կայծականց հրոյ բորբոքելոյ . իբրեւ զտեսիլ ղամբարաց խռնելոց 'ի մէջ գազանացն ։ եւ լոյս հրոյ . եւ 'ի հրոյ անտի փայլատակունք հատանէին ։ 14 *Եւ գազանքն երագս ընթանային . եւ թեթեւս դառնային 'ի նմանութի արեգական ։ 15 *Եւ տեսանէի՝ եւ ահաւասիկ անիւ մի յերկրի զհետ գազանացն չորեցունց . եւ կերպարանք անուոցն՝ եւ արարնց իբրեւ զտեսիլ ականց թարշիշի ։ 16 * Եւ կերպարանք չորեցունց՝ եւ տեսիլ նոցա . եւ գործած իւրեանց որպ թէ շրջիցի անիւ 'ի մէջ անուոյ ։ 17 *'Ի չորեսին կողմանս իւրեանց գնային՝ եւ յետս ընդդէմ ոչ դառնային 'ի թիկունս իւրեանց ։ 18 * Եւ բարձունք էին՝ եւ հայէին ընդ նա . եւ տեսանէի, ‖ զի լի էին աչօք թիկունք նոցա շուրջ զչորեքումբքն ։ 19 * Եւ 'ի գնալ գազանացն, գնային եւ անիւքն ընդ նոսա ։ եւ 'ի վերանալ գազանացն յերկրէ՝ վերանային եւ անիւքն ։ 20 * Ընդ որ կողմն դիմէր ամպն եւ հողմն, երթային գազանքն՝ եւ անիւքն էլ նոսին վերանային . զի ոգի կենդանի գոյր յանիւսն ։ 21 *Եւ 'ի գնալ նոցա՝ գնային . եւ 'ի կալ նոցա՝ զտեղի առնուին . եւ 'ի վերանալ նց յերկրէ, եւ անիւքն ընդ նոսին վերանային . զի ոգի կենդանի գոյր յանիւսն ։ 22 * Եւ նմանութի հաստատութե 'ի վերայ գլխոյ գազանացն իբրեւ զտեսիլ զականն ղանի ։ տարածեալ 'ի վերայ թեւոց նց 'ի վերուստ ։ 23 *Եւ 'ի ներքոյ հաստատութեն . թեւք իւրեանց տարածեալ սաւառնէին էլ միմեանս . իւրաքանչիւր երկու երկու ծածկէին զմարմինս իւրեանց ։ 24 * Եւ լսէի զձայն թեւոց նց 'ի սաւառնելն իբրեւ զձայն ջուրց բազմաց . իբրեւ զձայն սադդայի . 'ի գնալն իւրեանց ձայն պատգամաց . իբրեւ զձայն բանակի . եւ 'ի կալն իւրեանց՝ յանկչէին թեւք իւրեանց ։ 25 *Եւ ահա բարբառ 'ի վերուստ քան զհաստատութիւն՝ որ էր 'ի վր գլխոյ նց . 'ի կալ իւրեանց եւ 'յամբառնալ զթեւս իւրեանց ։ 26 * Եւ 'ի վերոյ քան զհաստատութիւն՝ որ 'ի վր գլխոյ նց իբրեւ զտեսիլ ական շափիւղայի . եւ նմանութի աթոռոյ 'ի վերայ նր ։ եւ 'ի վր աթոռոյն նմանութի կերպարանաց մարդոյ ։ 27 * Եւ տեսանէի իբրեւ զտեսիլ ական բազմագունի . եւ իբրեւ զտեսիլ հրոյ 'ի ներքոյ քան զնա շուրջանակի ։ միջով չափ 'ի վեր նմանութի արեգական ։ եւ միջով չափ 'ի խոնարհ՝ նմանութի հրոյ ։ եւ լոյսն որ զնովաւ 28 շուրջ բակ ունէր ։ * Իբրեւ զտեսիլ աղեղանդ՝ որ ձգի յամպս յաւուրս անձրեւաց ։ եւ այսպէս ահագին տեսիլ լուսոյ շուրջ զնովաւ ։

Գլ: Բ:

1 Եւ այս տեսիլ նմանութե փառացն Տն . իբրեւ տեսի, անկայ 'ի վերայ երեսաց իմոց, եւ լուայ բարբառ՝ որ խօսէր էլ իս՝ եւ ասէր . որդի մարդոյ՝ կաց 'ի վր ոտից քոց՝ եւ խօսեցայց ընդ քեզ ։ 2 *Եւ եկն 'ի վր իմ հոգի . վերացոյց զիս, եւ կանգնեալ կացոյց 'ի վր ոտից իմոց . եւ լսէի՝ զի խօսէր նա ընդ իս ։ 3 * Եւ ասէր՝ որդի մրդոյ՝ ես առաքեցից զքեզ առ դառնացուցիչ տունդ իէլի որք դառնացուցին զիս ինքեանք, եւ հարք իւրեանց . անարգեցին զիս մինչեւ ցայսօր ։ 4 *Որդիք եղջ իւրիկք են եւ խստասիրտք՝ առ որս առաքեմ զքեզ . եւ ասասցես ցնս ։ այսպէս ասէ Տր Տր ։ 5 * Եթէ իցէ լուիցեն՝ կամ սարսեսցին . զի տուն դառնացողաց են ։ եւ կամ բնաւ ծանիցեն՝ թէ մարգարէ ես դու 'ի մէջ նց ։ 6 * Եւ դու որդի մարդոյ ։ մի երկնչիցիս 'ի նոցանէ . եւ մի զանգիտեսցես յերեսաց նց . զի զայրանալով զայրասցին՝ եւ յարիցեն 'ի վր քո . զի 'ի մէջ կարձաց բնակեալ ես դու . մի երկնչիցիս 'ի բանից նց . եւ յերեսաց նոցա մի զանգիտիցես՝ զի տուն դառնացողաց են ։ 7 *Եւ խօսեսցիս ընդ նոսա զբանս զայսոսիկ . եթէ իցէ լուիցեն, կամ սարսեսցին . զի տուն դառնացողաց են ։ 8 * Եւ դու որդի մարդոյ՝ լուր բանից՝ զոր խօսիմ ընդ քեզ . մի լինիր դառնացող՝ իբրեւ զտուն դառնացողացն . բաց զբերան քո՝ եւ կեր զոր ջամբեցից քեզ ։ 9 *Տեսի՝ եւ ահա ձեռն ձգեալ առ իս . եւ 'ի նմա մատեան մի գրոյ . եւ պարզեաց զնա առաջի իմ . ‖ եւ էր գրեալ 'ի նմա ներքոյ եւ արտաքոյ՝ ողբ՝ եւ ձայնս՝ եւ վայս ։

Յայտ. 4. 7. / 10. 12.

Յայտ. 5. 1.

Գլ: Գ:

1 Եւ ասէ ցիս . որդի մարդոյ՝ զորինչ գտանես 'ի դմա, կեր ։ կեր մանր զմատեանդ զայդ . եւ գնա, եւ խօսեաց 2 ընդ որդիսն իէլի ։ * Եբաց զբերան 3 իմ . եւ ջամբեաց զմատեանն ։ *Եւ ասէ ցիս . որդի մարդոյ՝ բերան քո կերիցէ . եւ որովայն քո լցցի 'ի մատենէդ այդի՝

որ

Յայտ. 10.9. 10.

որ տուեալ քեզ․ կերի զայն՝ եւ եղեւ 'ի բերանի իմում իբրեւ զքաղցրութիւն մեղու։ 4 *Եւ ասէ ցիս՝ որդի մարդոյ՝ գնա դու՝ եւ մուտ 'ի տունն Իսրայէլի․ եւ խօսեսցիս առ նոսա զպատգամս իմ։ 5 *Զի ոչ եթէ առ ժողովուրդ խորախոս ծանրալեզու առաքեսցիս առ տունն Իսրայէլի։ 6 *Եւ ոչ առ ժողովուրդս բազումս այլազգիս․ կամ այլալեզուս․ եւ ոչ առ թանձրալեզուս՝ զորոց ոչ լուիցես զբանս նոցա․ զի թէ եւ առ այնպիսիս առաքէի զքեզ․ սակայն եւ նոքա լսէին քեզ։ 7 *Բայց տունն Իսրայէլի ոչ հաւանեսցին լսել քեզ․ քանզի ոչ կամին լսել ինձ․ զի ամենայն տունն Իսրայէլի հակառակօղք եւ խստասիրտք են։ 8 *Եւ ահաւադիկ արարի զդէմս քո հաստատուն առաջի երեսաց նոցա․ եւ զյաղթութիւն քո զօրացուցի առաջի հակառակութեան նոցա։ 9 *Եւ եղիցի յամենայն ժամ հաստատուն իբրեւ զվէմ յաղթութիւն քո․ մի երկնչիր 'ի նոցանէ․ եւ մի զանգիտիցես յերեսաց նոցա․ զի տուն դառնացողաց են։ 10 *Եւ ասէ ցիս Տէր․ որդի մարդոյ՝ զամենայն զբանս՝ զորս խօսեցայ ընդ քեզ, լուր ականջովք քովք՝ եւ դիր 'ի սրտի քում։ 11 *Եւ երթ՝ մուտ 'ի մէջ գերութեանն առ որդիս ժողովրդեանն․ խօսեսցիս ընդ նոսա՝ եւ ասասցես․ այսպէս ասէ Տէր Տէր՝ եթէ իցէ, լուիցեն, եւ ասասցեն։

Կ. անսաս ցեն։

12 *Եւ վերացոյց զիս հոգի․ եւ լուայ զկնի իմ ձայն շարժման մեծի՝ որք ասէին․ օրհնեալ են փառք Տեառն 'ի տեղւոջէ իւրմէ։ 13 *Եւ տեսի ձայն թեւոց գազանացն սաւառնելոց ընդ միմեանս․ եւ ձայն անուոց զհետ նոցա․ եւ ձայն շարժման։ 14 *Եւ հոգի Տեառն վերացոյց զիս, եւ բարձրացոյց․ եւ երթայի համբարձեալ 'ի դիմել հոգւոյն իմոյ․ եւ ձեռն Տեառն եղեւ 'ի վերայ իմ զօրութեամբ։ 15 *Եւ մտի վերամբարձ 'ի մէջ գերութեանն․ եւ շրջեցայ առ բնակչօքն քոբար գետոյ՝ որք էին անդ․ եւ նստայ անդ աւուրս եօթն դարձեալ 'ի մէջ նոցա։ 16 *Եւ եղեւ յետ եօթն աւուրն․ եղեւ բան Տեառն առ իս՝ եւ ասէ։ 17 *Որդի մարդոյ․ դէտ կացուցի զքեզ տանդ Իսրայէլի․ լուիցես յինէն պատգամս՝ եւ սպառնասցիս նոցա իբրեւ յինէն։ 18 *Յորժամ ասիցեմ ցանօրէնն․ եթէ մահու մեռանիցիս․ եւ դու ոչ զգուշացուցանիցես նմա․ եւ ոչ խօսեսցիս զգուշանալ անօրինին․ եւ դառնալ 'ի ճանապարհաց իւրոց չարաց՝ եւ կեալ․ անօրէնն յանօրէնութեան իւրում մեռցի․ եւ զարիւն նորա 'ի ձեռաց քոց խնդրեցից։ 19 *Իսկ եթէ դու զգուշացուցանիցես անօրինին․ եւ նա ոչ դարձցի յանօրէնութենէ իւրմէ՝ եւ 'ի ճանապարհէ իւրմէ․ անօրէնն այն յանօրէնութեան իւրում մեռցի․ եւ դու զանձն քո ապրեցուսցես։

Ներք. 33.7.

20 *Եւ յորժամ դարձցի արդարն յարդարութեանց իւրոց՝ եւ արասցէ յանցանս՝ արկից առաջանս գայթակղութեան նորա․ ինքն մեռցի․ քանզի ոչ եթէ յիշեսցին արդարութիւնք նորա՝ զորս արար․ բայց քանզի՝ դու ոչ զգուշացուցեր զնա, զարիւն նորա 'ի ձեռաց քոց խնդրեցից։ 21 *Իսկ թէ զգուշացուսցես զարդարն՝ զի մի մեղիցէ․ արդարն կելով կեցցէ․ զի զգուշացուցեր նմա․ եւ դու զանձն քո ապրեցուսցես։ 22 *Եւ եղեւ 'ի վերայ իմ անդ ձեռն Տեառն․ եւ ասէ ցիս․ արի, ել դու 'ի դաշտ անդր՝ խօսեսցի ընդ քեզ։ 23 *Յարեայ՝ եւ ելի 'ի դաշտ անդր․ եւ ահա իջեալ կային անդ փառք Տեառն իբրեւ զտեսիլն․ եւ զփառսն՝ զորս տեսի առ ափն քոբար գետոյ․ եւ անկայ 'ի վերայ երեսաց իմոց։ 24 *Եւ եկն 'ի վերայ իմ հոգի․ եւ կացոյց զիս 'ի վերայ ոտից իմոց․ խօսեցաւ ընդ իս՝ եւ ասէ․ մուտ՝ եւ արգելիր 'ի մէջ տան քոյ։ 25 *Եւ դու որդի մարդոյ․ ահաւադիկ տուեալ են 'ի վերայ քո կապանք․ եւ կապեսցեն զքեզ նոքօք․ եւ ոչ ելցես 'ի միջոյ նոցա։ 26 *Զլեզու քո կապեցից 'ի քիմս քո․ եւ եղիջիր դու համր․ եւ ոչ եղիցիս նոցա իբրեւ զայր մի յանդիմանիչ՝ զի տուն դառնացողաց են։ 27 *Եւ յորժամ խօսիցիմ ընդ քեզ՝ բացից զբերան քո․ եւ ասասցես ցնոսա․ այսպէս ասէ ադօնայի Տէր Տէր․ որ լսելոցն իցէ՝ լուիցէ․ եւ որ արհամարհելոցն իցէ՝ արհամարհեսցէ։ քանզի տուն դառնացողաց են։

Եւ խօսեսցի ընդ քեզ։

Վեր. 1. 3.

## ԳԼ: Դ.

1 Եւ դու որդի մարդոյ՝ առ դու քեզ աղիւս մի․ եւ դիցես զնա առաջի երեսաց քոց․ եւ նկարեսցես 'ի նմա զքաղաքն Երուսաղէմ։ 2 *Եւ տացես շուրջ զնովաւ պաշարումն․ եւ շինեսցես շուրջ զնովաւ մարտկոցս․ եւ պատեսցես զնովաւ պատնէշ․ եւ տացես շուրջ զնովաւ բանակս․ եւ ածցես շուրջ զնովաւ նետակալս։ 3 *Եւ առցես դու քեզ զտապակ երկաթի․ եւ կանգնեսցես զնա իբրեւ զպարիսպ երկաթի ընդ քեզ եւ ընդ քաղաքն․ եւ պատրաստեսցես զերեսս քո 'ի վերայ նորա․ եւ եղիցի 'ի պաշարումն, եւ պաշարեսցեն զնա․ զի այդ նշանակ է որդւոցն Իսրայէլի։ 4 *Եւ ննջեսցես 'ի ձախակողմն քո․ եւ դիցես զանիրաւութիւնս տանն Իսրայէլի 'ի վերայ դորա․ ըստ թուոյ աւուրցն՝ զոր ննջեսցես 'ի վերայ դորա (հարիւր եւ յիսուն օր)․ եւ առցես զանիրաւութիւնս նոցա։ 5 *Եւ ես ետու քեզ

զեր-

զերկուս անիրաւութիւնս նոցա 'ի թիւ աւուրց՝ հարիւր և իննսուն օր. և առցես զանիրաւութիւնս տանն Իէլի :

երեք հարիւր և իննսուն

6 *Եւ բովանդակեսցես 'ի միասին զամ̄. և դարձեալ ննջեսցես յաջակողմն քո. ‖ և դիցես զանօրէնութիւնս տանն Յուդայ զքառասուն օր : զի օր ընդ տարւոյ եդի քեզ :

‖Թւոց 14. 34.

7 *Եւ 'ի պաշարումն Եմ̄ի պատրաստեսցես զերեսս քո. և զօրացուսցես զբազուկ քո. և մարգարէասցիս 'ի վ̄ն նր̄ : 8 *Եւ ես ահա եդու 'ի վ̄ն քո կապանս. և մի փոխիցես կողմն 'ի կողմանէ. մինչև կատարեսցին աւուրք արգելանին քոյ : 9 *Եւ դու առ քեզ ցորեան, և գարի, ոսպն, և ոլոռն, և կորեակ, և հաճար. և արկցես զայն յաման մի խեցեղէն. և արասցես դու զայն քեզ հաց. և ըստ թուոյ աւուրցն զոր ննջիցես 'ի կողմն քո՝ հարիւր և իննսուն օր կերիցես զայն : 10 *Եւ զկերակուրն քո կերիցես կշռով. քսան սիկղ յաւուրն՝ ժամէ 'ի ժամ կերիջիր անտի : 11 *Եւ ջուր չափով արբջիր. և զվեցերորդ մասն դորակի միոյ՝ ժամէ 'ի ժամ արբջիր : 12 *Եւ նկան գարեղէն արկեալ կերիցես անտի. 'ի յաղբս մարդոյ եփեսջիր զայն առաջի երեսաց նց̄ :

13 *Եւ ասասցես : այսպէս ասէ Տր̄ Ա̄Ծ Իէլի. ‖ այդպէս կերիցեն որդիքն Իէլի զհացն իւրեանց պղծութբ̄ 'ի մէջ ազգաց. ուր ցրուեսցից զնոսա անդր :

‖Ովսէ. 9. 3.

14 *Եւ ասեմ, քաւ լիցի Տր̄ Ա̄Ծ Իէլի. եթէ պղծեալ իցէ երբէք անձն իմ 'ի պղծութիւս. և մեռելոտի՝ և գազանաբեկ ոչ երբէք կերի 'ի ծննդենէ իմմէ մինչև ցայժմ. և ոչ եմուտ 'ի բերան իմ միս պիղծ : 15 *Եւ ասէ ցիս. ահա ետու քեզ քակոր արջառոյ փոխանակ աղբին մարդոյ. և նովաւ արասցես զհաց քո : 16 *Եւ ասէ ցիս Տէր. որդի մարդոյ. ‖ ահաւադիկ ես բեկանեմ զհաստատութի հացի յԵմ̄է. և կերիցեն զհաց կշռով և կարօտանաց. և զջուր չափով՝ և ապականութբ̄ արբցեն : 17 *Զի եղիցին կարօտեալք 'ի հացէ՝ և 'ի ջրոյ. և ապականեսցի մարդ՝ և եղբայր իւր : և հաշեսցին յանիրաւութիւնս իւրեանց :

‖Եզ. 5. 16. և 14. 13.

## Գլ. Ե.

1 Եւ դու որդի մարդոյ՝ առ դու քեզ սուսեր յեսանեալ. սուր քան զածելի վարսավիրաց. ստանայցես զայն քեզ. և ածիցես զգլխով քով՝ և զմօրուօք. և առցես քեզ 'ի կշիռս՝ և կշռեսցես զնոսա : 2 *Զչորրորդ մասն հրով այրեսցես 'ի մէջ քաղաքին. ըստ լրութե աւուրց արգելանին. և զչորրորդ մասն կոտորեսցես սրով շուրջ զնովաւ. և զչորրորդ մասն հոսեսցես հողմով. և սուր արձակեցից զկնի նց̄ :

չորրորդ մասն
չորրորդ մասն
չորրորդ մասն

3 *Եւ առցես անտի սակաւ ինչ թուով և ծրարեսցես 'ի մեկնոցի քում : 4 *Դարձեալ առցես անտի. և ընկեսցես 'ի մէջ հրոյ՝ և այրեսցես զնոսա 'ի հուր. և անտի ելցէ հուր : 5 *Եւ ասասցես ամ̄ տանն Իսրայէլի. այսպէս ասէ Ադոնայի Տր̄. այս այն Եմ̄ է. զոր եդի 'ի մէջ հեթանոսաց զդա. և որք շուրջ զդովաւ գաւառք : 6 *Զի փոխեցին զիրաւունս իմ ընդ անիրաւութեն հեթանոսաց. և զօրէնս իմ, ընդ օրէնս աշխարհացն՝ որք շուրջ էին զնովաւ. զի զիրաւունս իմ մերժեցին. և յօրէնս իմ ոչ գնացին : 7 *Վասն այնորիկ այսպէս ասէ Ադոնայի Տր̄. փոխանակ զի պատճառք ձեզ 'ի յազգացդ են՝ որք շուրջ են զձեօք. և յօրէնս իմ ոչ գնացէք՝ և զիրաւունս իմ ոչ արարէք. այլև ոչ ըստ օրինաց հեթանոսաց՝ որք շուրջ զձեօք են՝ արարէք : 8 *Վս̄ այնորիկ այսպէս ասէ Ադոնայի Տր̄. ահաւասիկ ես 'ի վ̄ն քո. և արարից 'ի միջի քո դատաստանս առաջի ազգացդ : 9 *Եւ արարից ընդ քեզ՝ զոր ոչ երբէք արարի. և ոչ այլևս նման նմին արարից ըստ ամ̄ պղծութեանց քոց : 10 *Վս̄ այսորիկ հարք կերիցեն զորդիսն 'ի միջի քում. և որդիք կերիցեն զհարս. և արարից 'ի քեզ դատաստանս. և ցրուեցից զամ̄ մնացորդս քո ընդ ամենայն հողմս :

11 *Վս̄ այդորիկ կենդանի եմ ես՝ ասէ Ադոնայի Տր̄. փոխանակ զի զսրբութիւս իմ պղծեցեր ամ̄ դարշելեօքն քովք. և ամ̄ պղծալից ցանկութբ̄քն քովք. և ես մերժեցից զքեզ. և ոչ խնայեսցէ 'ի քեզ ակն իմ. և ոչ ողորմեցայց քեզ :

12 *Չորրորդ մասն քո մահու սպառեսցի. և (չորրորդ մասն քո) սովու վախճանեսցի 'ի միջի քում. և զչորրորդ մասն քո ը̄ ամ̄ հողմս ցրուեցից. և չորրորդ մասն քո շուրջ զքև 'ի սուր անկցի. և սուր արձակեցից զկնի նց̄ :

երեք մասն
երեք մասն
երեք մասն

13 *Եւ կատարեսցի սրտմտութի բարկութե իմոյ 'ի վերայ նց̄. և մխիթարեցայց. և ծանիցես, զի ես Տր̄ խօսեցայ նախանձու իմով 'ի կատարել ինձ զբարկութի իմ 'ի վ̄ն նց̄ :

14 *Եւ եդից զքեզ անապատ. և 'ի նախատինս հեթանոսաց. որք շուրջ զքև իցեն. և զդատերս քո շուրջ զքև առաջի ամ̄ անցաւորաց ճանապարհի :

15 *Եւ եղիցիս հեծեծելի և եղկելի. ծաղր՝ և երևոյթ 'ի մէջ ազգացն՝ որք շուրջ զքև իցեն 'յառնել ինձ 'ի քեզ դատաստանս բարկութբ̄, և սրտմտութբ̄, և վրէժխնդրութբ̄ ցասման :

16 *Ես Տր խօսեցայ․ 'ի յարձակել իմն զչարաչար նետս իմ սովու 'ի վր նոցա․ և եղիցին 'ի սատակումն․ արձակեցից զայս 'ի վերայ նց․ և սով գումարեցից 'ի վերայ ձեր․ ‖ և խորտակեցից զհաստատութի հացի քոյ։ 17 *Եւ առաքեցից 'ի վերայ քո զսով՝ և զգազանս չարս․ և պատժեցից զքեզ․ և մահ և արիւն անցցեն 'ի քեզ․ և ածից զքև շուրջ սուր․ զի ես Տր խօսեցայ։

‖ Ա եզ․ 4․ 16․
Ա այր․ 14․ 13․

## ԳԼ: Զ:

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ․ 2 *Որդի մարդոյ՝ հաստատեա զերեսս քո 'ի վերայ լերանցդ Իէլի․ մարգարեա՛յ 'ի վր դոցա։ 3 *‖ Եւ ասասցես՝ լերինք Իէլի՝ լուարո՛ւք զպատգամս ադոնայի Տն․ այսպէս ասէ ադոնայի Տր ցլերինս՝ և ցբլուրս՝ և ցձորս՝ և ցդաշտս․ ահաւադիկ ես ածեմ 'ի վր ձեր զսուր․ և ապականեսցին բարձունք ձեր։ 4 *Եւ կործանեսցին սեղանք ձեր․ և խորտակեսցին մեհեանք ձեր․ և տապաստ արկից զվիրաւորս ձեր առաջի կռոց ձերոց։ 5 *Եւ դիթաւալ կացուցից զորդիսդ Իէլի առաջի պատկերաց իւրեանց․ և ցրուեցից զոսկերս ձեր շուրջ զսեղանովք ձերովք։ 6 *Յամ բնակութե ձերում քաղաքք աւերեսցին․ և բարձունք ապականեսցին․ զի ջնջեսցին՝ և պակասեսցին սեղանք ձեր, և խորտակեսցին՝ և դադարեսցին կուռք ձեր․ և բարձցին մեհեանք ձեր․ և ջնջեսցին գործք ձեռաց ձերոց։ 7 *Եւ անկցին վիրաւորք 'ի միջի ձերում․ և ծանիջիք թե ես եմ Տր։ 8 *Եւ թողից 'ի ձէնջ ապրեալս 'ի սրոյ 'ի մէջ ազգաց՝ և 'ի վարատմանն ձերում 'ի մէջ աշխարհաց։ 9 *Եւ յիշեսցեն զիս ապրեալքն ձեր 'ի մէջ ազգաց․ ուր գերեցանն 'ի նոսա․ զի երդուեա՛յ ես սրտի նց շնացելոյ և ապստամբեցելոյ յինէն․ և աչաց նց պոռնկացելոց զհետ գնացիցն իւրեանց․ և կործեսցին յերեսս իւրեանց վասն չարեացն․ զորս արարին յամ գարշելիսն իւրեանց։ 10 *Եւ ծանիցեն եթե ես եմ Տր․ և ոչ 'ի զուր ինչ խօսեցայ առնել ընդ նոսա զայս ամ չարիս։ 11 *Այսպէս ասէ ադոնայի Տէր․ ծափս հար ձեռամբ․ և դոփեա՛ ոտամբ․ և ասասցես՝ վա՛շ վա՛շ՝ 'ի վերայ գարշելեացն․ և չարեաց տանն Իսրայէլի․ զի սրով և մահուամբ և սովու անկցին։ 12 *Հեռաւորն մահու վախճանեսցի․ և մերձաւորն սրով անկցի․ և մնացեալն և պաշարեալն սովու սատակեսցին․ և հաստատեցից զբարկութի իմ 'ի վերայ նոցա։ 13 *Եւ ծանիցեն թե ես եմ Տր․ յորժամ անկանիցին վիրաւորքն ձեր 'ի մէջ կռոցն ձերոց․ շուրջ զսեղանովքն ձերովք․ 'ի վերայ ամ բլրոց բարձանց․ և յամ գլուխս լերանց․ և 'ի ներքոյ ամ վարսաւոր ծառոց․ և 'ի ներքոյ ամ ամուր կաղնեաց՝ ուր արկանէին զխունկս ամ կռոց իւրեանց։ 14 *Եւ ձգեցից զձեռն իմ 'ի վր նոցա և եդից զերկիրն յապականութի և 'ի սատակումն․ յանապատէն դեբղաթայ յամենայն բնակութե նոցա․ և ծանիջիք եթե ես եմ Տր։

## ԳԼ: Է:

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 2 *Եւ դու որդի մարդոյ ասասցես․ այսպէս ասէ ադոնայի Տր․ երկրիդ Իէլացւոց վախճան հասեալ է․ հասեալ է վախճան 'ի վերայ չորեցունց կողմանց երկրիդ։ 3 *Ահաւադիկ հասեալ է 'ի վր քո վախճան․ և առաքեցից 'ի վերայ քո․ և խնդրեցից 'ի քէն զվրէժ ըստ ճանապարհաց քոց․ և հատուցից քեզ ըստ ամ գարշելեացն քոց։ 4 *Եւ ոչ խնայեսցէ ակն իմ 'ի քեզ՝ և ոչ ողորմեցայց․ զի ըստ գնացից քոց հատուցից քեզ․ և գարշելիքն քո 'ի միջի քում եղիցին․ և ծանիցեն թէ ես եմ Տր։ 5 *Վասնզի այսպէս ասէ Տր Տր․ չարիք մի ահաւասիկ՝ չարիք մի 6 հասեալ են։ *Եհաս վախճան․ զար 7 թեաւ 'ի վերայ քո։ *Ահաւադիկ հասեալ է զմբաղ 'ի վր քո․ որ բնակեալդ ես յերկրիդ․ հասեալ է ժամանակ․ մերձեցաւ օր՝ ոչ աղմկաւ՝ և ոչ երկամբք։ 8 *Այլ այժմ 'ի մօտոյ հեղից զբարկութի 'ի վերայ քո․ և կատարեցից 'ի քեզ զբարկութի իմ․ և դատեցայց զքեզ ըստ ճանապարհաց քոց․ և տաց 'ի վր քո զամ պղծութիս պաշտամանց քոց։ 9 *Եւ մի խնայեսցէ ակն իմ 'ի քեզ․ և ոչ և ս ողորմեցայց․ զի ըստ ճանապարհաց քոց հատուցից քեզ․ և գարշելիքդ քո 'ի միջի քում եղիցին․ և ծանիցես թէ ես եմ Տր՝ որ հարկանեմ զքեզ։ 10 *Ահաւասիկ օր Տն՝ ահա հասեալ է վախճան․ եկն զմբաղն․ ծաղկեցաւ գաւազանն․ յարեաւ ամբարտաւանութի։ 11 *Եւ խորտակեսցես զհաստատութի անօրինին․ ոչ աղմկաւ, և ոչ փութով․ ոչ են 'ի միտս իւրեանց․ և ոչ գեղեցկութի 'ի նոսա։ 12 *Ահա հասեալ է ժամանակ․ ահա եկն օր․ ստացօղն մի խնդասցէ․ և որ վաճառէն, մի ողբասցի․ զի բարկութի է յամենայն բազմութե նր։ 13 *Զի որ ստանայն, 'ի վաճառական անդր այլ մի ևս դարձցի․ ոչ ևս եկեալ 'ի կենդանութե նց․ զի

զի տեսիլն 'ի վերայ ամենայն բազմութեանց նոցա ոչ դարձցի. և մարդ յաչս կենաց իւրոց մի՛ հաստատեսցի: 14 *Փո՛ղ հարէք՝ և ընտրեցէ՛ք զամենայն. և ոչո՛ք իցէ՝ որ երթայցէ 'ի պատերազմ. զի բարկութիւն 'ի վերայ բազմութեան նորա: 15 *Պատերազմ սրոյ արտաքուստ. և սով և մահ 'ի ներքուստ. և որք 'ի դաշտին իցեն, սրով վախճանեսցին. և որք 'ի քաղաքի իցեն, սո՛վ և մա՛հ վախճանեսցէ: 16 *Եւ ապրեսցին, որք ապրելոցն իցեն 'ի նոցանէ. և եղիցին 'ի վերայ լերանց իբրև զաղաւնիս անձանձրոյթ մնչել. զամենեսեան կոտորեցից՝ զիւրաքանչիւր իւրոք յանօրէնութեան իւրում: 17 *Ամենայն ձեռք լքցին. և ամենայն երանք դարշեսցին խոնաւութեամբ: 18 *Ածցին քուրձ. և ծածկեսցեն զնոսա ցնորք. յամենայն երեսս ամօթ. և յամենայն գլուխս կնտութիւն: 19 *Արծաթ նոցա անկեալ կայցէ 'ի հրապարակս. և ոսկի նոցա արհամարհեսցի. արծաթ նոցա՝ և ոսկի նոցա ոչ կարասցէ փրկել զնոսա յաւուր բարկութեան Տեառն. և անձինք նոցա մի՛ յագեսցին. և որովայնք նոցա մի՛ լցցին. զի տանջանք եղեն անիրաւութեան նոցա: 20 *Ընտիր ընտիր զարդուցն եդին 'ի հպարտութիւն. և պատկերս գարշելեաց պաշտամանց իւրեանց արարին 'ի նոցանէ՝ վասն այնորիկ տաց զնոսա զայն 'ի պղծութիւն: 21 *Եւ մատնեցից զայն 'ի ձեռս օտարաց յափշտակել զնոսա. և ժանտագործաց երկրի յաւար. և պղծեսցեն զնոսա: 22 *Եւ դարձուցից զերեսս իմ 'ի նոցանէ՝ և պղծեսցեն զայցելութիս իմ. և մտանիցեն 'ի նոսա անխտիր. և պղծիցեն զնոսա: 23 *Եւ արասցեն զխառնակութիւն. զի լցաւ երկիր 'ի դատաստանաց արեանց նոցա. և քաղաքք լիք եղեն անօրէնութեամբք: 24 *Եւ ածից զչարս ազգաց՝ և ժառանգեսցեն զտունս նոցա. և կործանեցից զամբարտաւանութիւն բռնութեան նոցա. և պղծեսցին սրբութիւնք նոցա: 25 *Եկեսցէ քաւութիւն. խնդրեսցէ զխաղաղութիւն՝ և ոչ գտանիցէ: 26 *Վա՛յ 'ի վերայ վերայ եկիցէ, և գոյժ 'ի գուժի՝ խնդրեսցին տեսիլք 'ի մարգարէից. և օրէնք դիւրինչք 'ի քահանայէ. և խորհուրդ 'ի ծերոց. և ոչ գտանիցին: 27 *Թագաւորն սգասցի. և իշխանն զգեցցի զապականութիւն. և ձեռք ժողովրդեան երկրին լքցին. ըստ ճանապարհաց նոցա արարից նոցա. և ըստ դատաստանաց նոցա առից զվրէժ 'ի նոցանէն. և ծանիցեն թէ ես եմ Տէր:

Եսայ. 15. 2. Երեմ. 48. 37. Առակ. 11. 4. Սոփոն. 1. 18. Եկեղեց. 5. 10. և 13.

և օրէնք կորնչին 'ի քահանայէ և խորհուրդ

## ԳԼ: Ը.

1 Եւ եղև յամին վեցերորդի՝ յամսեանն հինգերորդի. որ օր հինգ էր ամսոյն. ես նստէի 'ի տան իմում. և ծերքն յուդայ առաջի իմ. և եղև 'ի վերայ իմ անդ ձեռն ադոնայի Տեառն:

2 *Եւ տեսանէի, և ահա նմանութիւն առն՝ 'ի միջոյն և 'ի խոնարհ հուր. և 'ի միջոյն և 'ի վեր իբրև զտեսիլ օդոյ. և իբրև զգոյն բազմագունի ակման:

3 *Եւ ձգեաց զնմանութիւն ձեռին՝ և էառ զգագաթամբք գլխոյ իմոյ. և վերացոյց զիս ընդ երկինս, և ընդ երկիր. և տարաւ զիս յԵրուսաղէմ 'ի տեսլեան Աստուծոյ. և կացոյց զիս յանդիման դրանն ներքնոյ. որ հայի ընդ հիւսիս. ուր էր աթոռ պատկերի նախանձու ստացողին:

Դանիէ. 14. 35.

4 *Եւ անդ էին փառք Աստուծոյ Իսրայէլի ըստ տեսլեանն՝ զոր տեսի 'ի դաշտի անդ:

5 *Եւ ասէ ցիս, որդի մարդոյ՝ հայեաց աչօք քովք 'ի կողմն հիւսիսոյ՝ և ահա 'ի հիւսիսոյ կողմանէ 'ի վերայ դրան սեղանոյն, ուր կայր պատկեր նախանձու 'ի մուտս դրանն՝ որ հայէր ընդ արևելս:

6 *Եւ ասէ՝ որդի մարդոյ տեսանես, զինչ գործեն դոքա աստ անօրէնութիւն տունդ Իսրայէլի. հեռանալ 'ի սրբութեանց իմոց. դարձեալ ևս մեծամեծս քան զայդ տեսցես անօրէնութիւնս:

7 *Եւ եմոյծ զիս առաջի դրանց սրահին. և տեսի՝ և ահա ծակ մի յորմն:

8 *Եւ ասէ ցիս որդի մարդոյ. բրեա՛ զորմդ. և բրեցի զորմն. և ահա դուռն մի:

9 *Եւ ասէ ցիս, որդի մարդոյ՝ մո՛ւտ, և տե՛ս զանօրէնութիւնդ՝ և զչարիս՝ զորս գործեն դոքա:

10 *Մտի, և տեսի. և ահա ամենայն նմանութիւն սողնոյ. և անասնոյ՝ անօտի գարշելեաց. և տեսի զամենայն զկուռս տանն Իսրայէլի նկարեալ շուրջ զնովաւ:

11 *Եւ եօթանասուն այր 'ի ծերոց տանն Իսրայէլի. և յեզոնիա որդի սափանիայ 'ի մէջ նոցա՝ կայր առաջի նոցա. և իւրաքանչիւր բուրվառ իւր 'ի ձեռին իւրում. և ծուխ խնկոյ ելանէր դիզանայր իբրև զամպ:

12 *Եւ ասէ ցիս Տէր. որդի մարդոյ՝ տեսանես զինչ ծերք տանդ Իսրայէլի գործեն այդր ընդ խաւար, իւրաքանչիւր 'ի ծածուկ սենեկի իւրեանց. զի ասեն՝ եթող Տէր. և ոչ հայի յերկիր:

13 *Եւ ասէ ցիս. դարձեալ ևս մեծամեծս անօրէնութիւնս

14 տեսցես՝ զորս գործեն դոքա: *Եւ եմոյծ զիս առաջի դրան տանն Տեառն. որ հայէր ընդ հիւսիս. և ահա նստէին անդ կանայք՝ և ողբային զթամուզ:

15 *Եւ ասէ ցիս, տեսանես զայդ որդի մարդոյ. դարձեալ ևս մեծամեծս գործս

քան զայդ տեսանիցես ։ *Եւ եմոյծ զիս 'ի ներքին սրահ տանն Տն. եւ ահա 'ի վերայ դրանց տաճարին Տն ընդ սեղանն եւ ընդ վանդակն՝ իբրեւ արք քսանեւհինգ. որոց զթիկունս 'ի տաճարն Տն դարձուցեալ էր, եւ զերեսս ընդ արեւելս, եւ երկիր պագանէին արեգականն։ 17 *Եւ ասէ ցիս. տեսեր զայդ որդի մարդոյ. միթէ փոքր ինչ իցէ անօրէնութիւն տանդ Իէլի զոր գործեն աստ. զի լցին զերկիրն անօրէնութք. եւ դարձան 'ի բարկացուցանել զիս. եւ ահա ձկտեն զբաղուկ որթոյն իբ արհամարհանս։ 18 *Եւ ես արարից ընդ դոսա բարկութբ՝ եւ ոչ խնայեսցէ ակն իմ. եւ ոչ ողորմեցայց նոցա. եւ աղաղակեսցեն յականջս իմ մեծաձայնս. եւ ոչ լուայց նոցա։

## Գլ. Թ.

1 Եւ աղաղակեաց յականջս իմ մեծաձայն՝ եւ ասէ. մերձեալ է վրէժխնդրութիւն քաղաքին. եւ իւրաքանչիւր ոք զգործի սատակման 'ի ձեռին իւրում ունէր։ 2 *Եւ ահա արք վեց գային ընդ ճանապարհ բարձու դրանն՝ որ հայի ընդ հիւսիս. եւ իւրաքանչիւր տապար 'ի ձեռին իւրում. եւ այր մի 'ի միջի նոցա զգեցեալ զպճղնաւոր. եւ կամար ականակապ յականց շափիղայ ընդ մէջ իւր. եւ մտին, կացին առ պղնձի սեղանոյն։ 3 *Եւ փառքն Այ Իէլի վերացան 'ի քրոբէիցն յոդն որ 'ի մէջ տաճարին. եւ կոչեաց զայրն՝ որ զգեցեալն էր զպճղնաւորն. եւ ունէր զկամարն ընդ մէջ իւր։ 4 *Եւ ասէ ցնա Տր. անց ընդ մէջ քաղաքիդ Եէմի. ‖ եւ դիր զնշան 'ի ճակատ արանցդ՝ որք հեծեն եւ յոգւոց հանեն 'ի վերայ անօրէնութեց գործեցելոց 'ի մէջ նոցա։

‖ Յայտ. 12. 7. Յայտ. 7. 3.

5 *Եւ ցնոսա ասէ՝ ինձ լու 'ի լու. գնացէք զհետ նր 'ի քաղաքն՝ եւ կոտորեցէք. եւ մի խնայեսցեն աչք ձեր. եւ մի ողորմեսջիք։ 6 *Ծերոց՝ եւ տղայոց. կուսին՝ երիտասարդին. եւ զկանայս կոտորեսջիք 'ի սատակումն. բայց յորոյ վր նշանն իցէ՝ մի մերձենայցէք. եւ սկիզբն 'ի սրբութեց իմոց արասջիք. եւ սկսան յարանցն ծերոց՝ որք էին 'ի ներքս 'ի տաճարին։ 7 *Եւ ասէ ցնոսա. պղծեցէք զտունդ՝ եւ լցէք զտունդ դիակամբք. եւ ելէք՝ կոտորեցէք. եւ հարէք զքաղաքդ։ 8 *Եւ եղեւ 'ի կոտորելն զնս. հայեցայ՝ տեսի՝ եւ անկայ 'ի վերայ երեսաց իմոց, աղաղակեցի եւ ասեմ. վա՜յ ինձ ադոնայի Տր. ջնջես դու աւադիկ զմնացորդս տանդ Իսրայելի 'ի հեղուլ սրտմտութե քո 'ի վերայ Եէմի։

9 *Եւ ասէ ցիս՝ անիրաւութիւն տանդ Իէլի եւ Յուդայ մեծացաւ յոյժ յոյժ. զի լցաւ երկիրդ ժողովրդօք բազմօք. եւ քաղաքդ լի եղեւ անօրէնութեամբ՝ եւ պղծութբ. զի ասացին եթէ եթող Տր 10 զերկիրն. եւ ոչ եւս հայի Տր։ *Եւ արդ ոչ խնայեսցէ ակն իմ, եւ ոչ ողորմեցայց. ըստ ճանապարհաց նոցա տաց 'ի 11 գլուխս նոցա ։ *Եւ ահա այրն՝ որ զգեցեալն էր զպճղնաւորն. եւ ունէր զկամարն ընդ մէջ իւր. պատասխանի ետ՝ եւ ասէ. արարի, որպէս եւ հրամայեցեր ինձ։

## Գլ. Ժ.

1 Եւ տեսանէի՝ եւ ահա 'ի վերայ հաստատութեն՝ որ էր 'ի վերայ գլխոյ քրովբէիցն իբր վէմ շափիղայ ական. եւ 'ի վերայ նորա նմանութիւն աթոռոյ. 2 *Եւ ասէ ցայրն՝ որ զգեցեալ էր զպատմուճանն. մուտ 'ի մէջ անուոցդ. եւ 'ի ներքոյ քրովբէիցդ՝ եւ լից զգուռս քո կայծակամբք հրոյ 'ի միջոյ քրովբէիցդ. եւ ցանեա՛ 'ի վերայ քաղաքիդ. 3 եւ եմուտ առաջի իմ։ *Եւ քրովբէքն կային ընդ մէջ տաճարին 'ի մտանել առնն. եւ ամպ ելից զսրահն ներքին։ 4 *Եւ փառքն Տն վերացան 'ի քրովբէից անտի յոդն՝ որ 'ի մէջ տաճարին. եւ տաճարն լի եղեւ ամպով. եւ սրահն 5 լի եղեւ լուսով փառացն Տն։ *Եւ ձայն թեւոցն քրովբէից լսելի լինէր մինչեւ 'ի սրահն արտաքին. իբրեւ զձայն 6 Այ սադայի՝ որ խօսէր։ *Եւ եղեւ՝ մինչդեռ տայր զպատուէր առնն՝ որ զգեցեալէր զպատմուճանն սբ՝ եւ ասէր. առ հուր 'ի միջոյ անուոցդ 'ի միջոյ քրովբէիցդ. եմուտ՝ եւ եկաց 'ի մէջ 7 անուոցն։ *Եւ ձգեաց քերոբ մի զձեռն իւր առ հուրն. որ էր 'ի միջոյ քրոբէիցն. եւ ետ 'ի ձեռս նր. որ զգեցեալէր զպատմուճանն սուրբ. էառ՝ եւ ել ան-8 տի։ *Հայէի եւ ընդ քերոբէսն. եւ տեսանէի նմանութիւն ձեռին մարդոյ 'ի 9 ներքոյ թեւոց նոցա։ *Տեսանէի՝ եւ ահա անիւք չորք կային մերձ առ քրոբէսն. մի անիւ զհետ միոյ քրոբէի. եւ տեսիլ անուոցն իբրեւ տեսիլ ական 10 կարկեհանի։ *Եւ տեսիլն նոցա՝ եւ նմանութիւն չորեցունց. որպէս զի իցէ 11 տեսանել անիւ 'ի մէջ անուոյ։ *Եւ 'ի գնալն իւրեանց՝ 'ի չորեսին կողմանսն իւրեանց գնային։ Եւ յետս ընդդէմ ոչ դառնային. զի յոր կողմն հայէր մի առաջինն՝ զհետ նր երթային. եւ յետս 12 ընդդէմ ոչ դառնային։ *Եւ ամ մարմինք իւրեանց՝ եւ ձեռք՝ եւ թեւք նց՝ եւ անիւքն՝ լի էին աչօք՝ շուրջ զչորեքումբք

քումբք անուոք նոցա: 13 *Եւ անուոցն կոչեցաւ գեղգեղ իմովս լսելով: 14 *Եւ չորք դէմք միոյ. դէմք միոյն դէմք քրոբէի. եւ դէմք երկրորդին դէմք մարդոյ. եւ դէմք երրորդին դէմք առիւծու. եւ դէմք չորրորդին դէմք արծուոյ: 15 *Եւ վերացան քրոբէքն: Ն.յս այն գազան է՝ զոր տեսի 'ի վերայ քոբար գետոյ: 16 *Եւ 'ի գնալ քրոբէիցն՝ գնային եւ անիւքն զհետ նոցա. եւ 'յամբառնալ քրոբէիցն զթեւս իւրեանց 'ի վերանալ յերկրէ, ոչ դառնային յետս անիւքն. քանզի զհետ նց էին: 17 *'Ի կալն նոցա՝ դադարէին. եւ 'յամբառնալ նոցա՝ ընդ նոսին վերանային. զի ոգի կենդանութեան էր 'ի նոսա: 18 *Եւ ելին փառքն Տն 'ի միջօդոյ տաճարին. եւ նստան 'ի վերայ քրոբէիցն: 19 *Եւ ամբարձին քրոբէքն զթեւս իւրեանց. եւ վերացան յերկրէ առաջի իմ. յելանելն նոցա՝ եւ անիւքն զհետ երթային նց. եւ կային առաջի դրանդեաց դրան տանն Տն որ հայէր ընդ արեւելս. եւ փառքն այ իսրայէլի 'ի վերայ նոցա: 20 *Ն.յս այն գազան է. զոր տեսի 'ի ներքոյ Այ իէլի ||'ի վերայ քոբար գետոյ. եւ գիտացի թէ այնք քրոբէք են: 21 *Չորք դէմք միոյ միոյ. եւ (ութն) թեւք միոյ միոյ. եւ նմանութիւն ձեռին մարդոյ 'ի ներքոյ թեւոց նոցա: 22 *Եւ նմանութիւն երեսաց նց. այս դէմք են՝ զորս տեսի 'ի ներքոյ փառացն այ իէլի 'ի վերայ քոբար գետոյ. զտեսիլ նոցա՝ եւ զնս. զի ըստ իւրաքանչիւր դիմաց գնային:

||Վեր. 1. 3.

## ԳԼ. ԺԱ.

1 Եւ ամբարձ զիս հոգի. եւ եած զիս յանդիման դրան տանն Տն. որ հայէր ընդ արեւելս. եւ ահա առաջի դրան սրահին արք իբրեւ քսան եհինգ: եւ տեսի 'ի մէջ նոցա զյեզոնիա զորդի ազերայ՝ եւ զփաղտիա բանեայ՝ զառաջնորդս ժողովրդեանն: 2 *Եւ ասէ ցիս Տր. որդի մարդոյ, այդք արք են՝ որք խորհին մնոտիս. եւ տան խրատ չար 'ի քաղաքիդ յայդմիկ: 3 *Եւ ասեն՝ ոչ եթէ նորոգ ինչ շինեալ են տունքս: այլ սա է կաթսայ՝ եւ մեք միս: 4 *Վս այնորիկ մարգարէաց 'ի վր նոցա. մարգարէաց որդի մարդոյ: 5 *Եւ եհաս 'ի վր իմ ոգի Տն եւ ասէ ցիս: այսպէս ասէ ադօնայի Տր. այսպէս ասացէք տունդ իէլի: եւ զխորհուրդս ոգւոց ձերոց ես գիտեմ: 6 *Յաճախեցէք զդիակունս ձեր 'ի քաղաքիդ յայդմիկ. եւ լցէք զճանապարհս դորա վիրաւորօք: 7 *Վս այդորիկ այսպէս ասէ ադօնայի Տր. զդիակունս ձեր՝ զոր կոտորեցէք 'ի միջի դորա. նոքա միս են՝ եւ կաթսայն դա է: 8 եւ զձեզ հանից 'ի միջոյ դորա: *Ի սրոյ երկնչէիք, սուր ածից 'ի վր ձեր՝ ասէ ադօնայի Տր: 9 *Եւ հանից զձեզ 'ի միջոյ դորա. եւ մատնեցից զձեզ 'ի ձեռս օտարաց. եւ արարից 'ի ձեզ դատաստանս: 10 *Ի սուր անկանիցիք: եւ 'ի վերայ լերանցն իէլի դատեցայց զձեզ. 11 եւ ծանիցէք թէ ես եմ Տր: *Եւ դա չիցէ կաթսայ: եւ դուք չլինիցիք 'ի դմա միս. 'ի վր լերանցդ իսրայէլի դատեցայց զձեզ: 12 *Եւ գիտասջիք թէ ես եմ Տր. զի ըստ արդարութեանց իմոց դուք ոչ գնացիք. եւ զիրաւունս իմ դուք ոչ արարիք: այլ ըստ կրօնից ազգացն՝ որք շուրջ զձեւօք են՝ արարիք: 13 *Եւ եղեւ մինչդեռ մարգարէանայի, մեռաւ փաղտիա որդի բանեայ: անկայ 'ի վր երեսաց իմոց. եւ 'ի ձայն մեծ աղաղակեցի՝ եւ ասեմ: վայ ինձ՝ վայ ինձ ադօնայի Տր. զի 'ի կատարած հասուցեր զմնացորդս իսրայէլի: 14 *Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ: 15 *Որդի մարդոյ՝ եղբարք քո՝ եւ արք գերութեան քո՝ եւ ամ տունդ իսրայէլի հասեալ են 'ի վախճան: որոց ասացին բնակիչքն եէմի, 'ի բաց մերժեցարուք 'ի Տէ. զի մեզ տուեալ է զերկիրդ 'ի ժառանգութի: 16 *Վս այնորիկ ասա. այսպէս ասէ ադօնայի Տէր. թէ մերժեցից զնոսա յազգս. եւ ցրուեցից զնս ընդ ամ երկիր. եւ եղէց նց փոքրմի սրբութի 'ի գաւառսն՝ յորս մտանիցեն 'ի նոսա: 17 *Վս այնորիկ այսպէս ասէ ադօնայի Տր. եւ ընկալայց զնոսա յազգացն. եւ ժողովեցից զնոսա 'ի գաւառացն՝ ուր ցրուեցից զնս 'ի նոսա: եւ տաց նց զերկիրն իսրայէլի: 18 *Եւ մտցեն անդր՝ եւ բարձցեն զամ գարշելիս նորա. եւ զամ զանօրէնութիս նորա 'ի նմանէ: 19 *||Եւ տաց նց սիրտ այլ. եւ զոգի նոր պարգեւեցից նոցա: եւ հանից զսիրտն քարեղէն 'ի մարմնոյ նոցա. եւ տաց նց զսիրտ մարմնեղէն: 20 *Օր ըստ հրամանաց իմոց գնասցեն՝ եւ զիրաւունս իմ պահեսցեն, եւ արասցեն զնոսա. եւ եղիցին ինձ 'ի ժողովուրդ՝ եւ ես եղէց նց յԱծ: 21 *Եւ ըստ գարշելեաց սրտից նոցա. եւ ըստ անօրէնութեանց նց՝ զորս արարին. եւ ըստ ճանապարհացն յորս գնացին՝ հատուցից 'ի գլուխս նոցա. 22 ասէ ադօնայի Տր: *Եւ ամբարձին քրոբէքն զթեւս իւրեանց՝ եւ անիւքն զհետ նոցա. եւ փառքն Այ իէլի 'ի վր նոցա: 23 *Եւ ամբարձան փառքն Տն 'ի միջոյ քաղաքին. եւ կային 'ի վր լերինն՝ 24 որ էր յանդիման քաղաքին: *Եւ վերացոյց զիս ոգի: եւ եած զիս յերկիրն քաղ_

||Երեմ. 31. 31. Վայր. 36. 26.

քաղդէացւոց՝ 'ի մէջ գերութեանն տեսլեամբ հոգւոյն Այ։ և յարեաւ 'ի տեսլենէ անտի՝ զոր տեսի ։ * Եւ խօսեցայ առ գերութիւնն զամենայն բանս Տն, զորս եցոյց ինձ։ 25

## ԳԼ. ԺԲ.

Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 1 * Որդի մարդոյ՝ 'ի մէջ անօրէնութեանց նոցա բնակեալ ես դու՝ որք աչս ունին տեսանելոյ, և ոչ տեսանեն. և ականջս լսելոյ, և ոչ լսեն. զի տուն դառնացողաց են. 2 * Եւ դու որդի մարդոյ՝ արա քեզ զհանդերձ գերութեան. և վարեա՛ց 'ի գերութիւն զաւուրս առաջի դոցա. և գերիցե՛ր 'ի տեղւոջէ քումմէ յայլ տեղի առաջի դոցա՝ զի տեսցեն. քանզի տուն դառնացողաց են ։ 3 * Եւ մերկասցիս զհանդերձ քո. իբրև զհանդերձ գերութեան ։ 4 * Առաջի աչաց նց ծակեսցես դու քեզ զորմ, և ելցես ընդ այն ։ 5 * Առաջի նոցա կորակոր գնասցես՝ զաղտագողի գնասցես. ձորձ ըզ գլխով պատիցես. և մի տեսանիցես զերկիր. զի նշանակ ետու զքեզ տանն Իղի ։ 6 * Եւ արարի այնպէս՝ ըստ ամի զոր պատուիրեաց ինձ Տէր ։ և արկի հանդերձ գերութեան զաւուրս. և փորեցի ընդ երեկոյս զորմն ձեռամբ իմով. և երթայի զաղտագողի կորակոր առաջի նց ։ 7 * Եւ եղև բան Տն առաւօտն 'ի վր իմ, և ասէ ։ 8 * Որդի մարդոյ՝ ո՞չ ասացին ցքեզ տունդ Իղի՝ տուն դառնացողաց. թէ զի՞նչ է՝ զոր գործես ։ 9 * Եւ արդ՝ ասա՛ ցնոսա ։ այսպէս ասէ Տր ցիշխանսդ՝ և ցառաջնորդսդ Երուսաղէմի՝ և ցամ տունդ Իսրայէլի՝ որք են 'ի մէջ դոցա ։ 10 * Ասէ ես նշանակ արարից 'ի միջի դորա. որպէս արարի, այդպէս եղիցի դմա. զի 'ի պանդխտութիւն, և 'ի գերութիւն երթիցեն ։ 11 * Եւ իշխանն՝ որ է 'ի մէջ նոցա՝ կորակոր գնասցէ. զաղտագողի շրջեսցի. զորմ հատեալ ելցէ. զերեսս ծածկեալ գնասցէ. և մի տեսցէ զերկիր ։ 12 * ‖ Եւ արկից զցանց իմ զնովաւ՝ և պատեսցի ուռկանաւ 'ի պաշարումն. և ածից զնա 'ի Բաբիլոն յերկիր քաղդէացւոց. և զդա մի տեսցէ՝ և այդր վախճանեսցի ։ 13

‖ Մտթ. 17. 20.

* Եւ զամ օգնականս նր՝ որք շուրջ զնովաւ իցեն. և զպաշտպանս նր ընդ ամ հողմս ցրուեցից. և սուր զկնի նց արձակեցից ։ 14 * Եւ ծանիցեն թէ ես եմ Տր. 'ի ցրուելն ինձ զնս ընդ ազգս. և ցանել զնոսա ընդ գաւառս ։ 15 * Եւ թողից 'ի նոցանէ արս թուով 'ի սովէ և 'ի սրոյ՝ և 'ի մահուանէ ։ զի պատմեսցեն զամ զանօրէնութիւնս նոցա 'ի մէջ 16 ազգացն՝ յորս մտանիցեն անդր. և ծանիցեն, թէ ես եմ Տր ։ 17 * Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 18 * Որդի մարդոյ՝ զհաց քո կարօտութեամբ կերիցես. և զջուր քո տանջանօք և նեղութեամբ արբցես ։ 19 * Եւ ասասցես ցժողովուրդ երկրին ։ այսպէս ասէ ադոնայի Տր ցբնակիչսն Երուսաղէմի՝ յերկրին Իղի. զհաց իւրեանց կարօտութեամբ կերիցեն. և զջուր իւրեանց ապականութեամբ արբցեն՝ զի ապականեսցի երկիր լրիւ իւրով. զի յամպարշտութեան են ամ բնակիչք նր ։ 20 * Եւ քաղաքք նոցա բնակեալք՝ աւերեսցին ։ և երկիր նոցա յապականութիւն եղիցի. և ծանիջիք թէ ես եմ Տր ։ 21 * Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 22 * Որդի մարդոյ. զի՞նչ է ձեզ առակդ այդ յերկրիդ Իէղացւոց՝ զոր ասեն. Հեղան աւուրք՝ և կորեան աւուրքն ամ ։ 23 * Վն այդորիկ ասա՛ ցնոսա. այսպէս ասէ ադոնայի Տր. դարձուցից զառակդ զայդ ։ զի խօսեսցիս առ նս ։ թէ հասեալ են աւուրք՝ և պատգամք ամ տեսլեանց ։ 24 * Զի ոչ ևս եղիցի ամ տեսիլ սուտ. և ո՛ր խօսիցի ըղձութեամբ՝ հնարհուկս 'ի մէջ որդւոցն Իսրայէլի ։ 25 * Քանզի ես Տր խօսեցայց զբանս իմ. խօսեցայ, և արարից. և ոչ ևս յերկարեցից. զի յաւուրս ձեր՝ տունդ դառնացողաց, խօսեցայց զբանն, և արարից. ասէ ադոնայի Տր ։ 26 * Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 27 * Որդի մարդոյ՝ ահաւադիկ տունդ Իղի տուն դառնացողաց ասեն. տեսիլդ՝ զոր տեսանէ դա՝ յաւուրս բազումս՝ և 'ի ժամանակս հեռաւորս լինելոց է այդ, զոր դայդ մարգարէանայ ։ 28 * Վն այդորիկ ասա՛ ցնս. այսպէս ասէ ադոնայի Տր ։ ոչ ևս յերկարեսցին ամ բանք իմ, զոր խօսեցայց. այլ զոր խօսեցայց, արարից. ասէ ադոնայի Տր ։

յերկար- ձգեսցի- աւուրք- և կորիցէ ամ տե- սիլ

## ԳԼ. ԺԳ.

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 2 * Որդի մարդոյ՝ մարգարէա՛ց 'ի վր մարգարէիցդ Իսրայէլի. որք մարգարէանանդ. և ասասցես ցմարգարէսդ՝ որք մարգարէանային 'ի սրտէ իւրեանց. մարգարէասցիս, և ասասցես ցնոսա. լուարուք զպատգամս Տն ։ 3 * Այսպէս ասէ ադոնայի Տր. ‖ վա՛յ դոցա՝ որք մարգարէանանդ 'ի սրտէ իւրեանց. որք երթան զհետ ոգւոյ իւրեանց. և ամենևին ոչ տեսանեն ։ 4 * Իբրև աղուեսք յաւերակս էին մարգարէք քո Իղ ։ 5 * Եւ ոչ կացին 'ի հաստատութեան. և ժողովեցին հօտս 'ի վր տանդ Իղի. և ոչ հաստեցան՝ որք խօսէին

‖ Երեմ. 23. 1. Միք. 14. 9. և 34. 2.

և ոչ ժո- ղովեցին

սէին յանուն Տն: 6 Որք տեսանէին զսուտս. և պատմէին զըղձութիւնս մնոտիս: որք ասէին՝ այսպէս ասէ Տր. և ես Տր ոչ առաքեցի զնոսա: և սկսան յարուցանել բանս: 7 Ո՞չ ապաքէն տեսիլս սուտս տեսիք. և ըղձութիւնս մնոտիս պատմեցիք. և ասէիք՝ այսպէս ասէ Տր՝ և ես Տէր ոչ խօսեցայ:

8 Վն այնորիկ ասա. այսպէս ասէ ադօնայի Տր. փոխանակ զի բանք ձեր սուտք են. և ըղձութիւնք ձեր մնոտիք. վն այնորիկ ես 'ի վր ձեր՝ ասէ ադօնայի Տր: 9 Եւ ձգեցից զձեռն իմ 'ի վր մարգարէիցն. որք տեսանէին սուտս. և խօսէին մնոտիս: 'ի խորհուրդ ժողովրդեան իմոյ մի կացցեն. և մի 'ի գիրս տանն Իէլի գրեսցին. և յերկիրն Իէլի մի մտցեն: և ծանիցեն թէ ես եմ ադօնայի Տր: 10 Փոխանակ զի մոլորեցուցին զժողովուրդն իմ, և ասէին. խաղաղութիւն, խաղաղութիւն. և ոչ գոյր խաղաղութիւն: և ինքն շինէր զորմ. և նոքա ծեփէին, զի փլցի: 11 Ասէ ցնոսա՝ որք ծեփէինն. թէ անկցի. անձրև հեղեղեսցէ. ... քանզի փլանելոց է. եկեսցէ անձրև՝ և ողողեսցէ. և տաց քարինս ումբս քարաց 'ի պահանգս նոցա՝ և կործանեսցին. հողմ յարիցէ՝ և տապալեսցէ: 12 Եւ ահա կործանեցաւ որմն. և ոչ ևս ասասցեն ձեզ. թէ ուր է ծեփն ձեր՝ զոր ծեփեցիքն: 13 Վն այսր ասէ ադօնայի Տէր. արձակեցից հողմ՝ որ բառնայցէ սրտմտութբ իմով. և եկեսցէ անձրև ողողանել բարկութբ իմով. և զվէմս ումբաքարացն ածից ցասմամբ 'ի վր նր 'ի վախճանս: 14 Եւ յատակեցից զորմն՝ զոր ծեփէիք՝ և կործանեցից. և ընկեցից զնա յերկիր: և յայտնեսցին հիմունք նր. և անկցի. և վախճանեսցի յանդիմանութբ. և գիտասջիք, թէ ես եմ Տր: 15 Եւ կատարեցից զսրտմտութիւն իմ 'ի վերայ որմոյն. և 'ի վր ծեփողաց նր. և կործանեսցի: և ասացից ցձեզ՝ թէ չիք ուրեք որմ. և ոչ ծեփօղք նր: 16 Մարգարէք Իսրայէլի՝ որք մարգարէանային 'ի վր Եմի. և տեսանէին նմա զխաղաղութիւն, և ոչ գոյր խաղաղութիւն. ասէ ադօնայի Տր: 17 Եւ դու որդի մարդոյ՝ հաստատեա զերեսս քո 'ի վր դստեր ժողովրդեան քոյ՝ որք մարգարէանան 'ի սրտից իւրեանց. մարգարէա՛ց 'ի վր նց: 18 Եւ ասասցես՝ այսպէս ասէ ադօնայի Տէր. վա՜յ այնոցիկ՝ որք կարեն՝ կարկատէն զբարձկնեարդ 'ի ներքոյ ամ արմկան ձեռին. և առնեն զգլխադիրս գլխոց ամ հասակաց թիւրել զանձինս. զի թիւրեցան անձինք ժողովրդեան իմոյ: և ապրեցուցանէին 19 զանձինս: Եւ խամխանէին զիս առաջի ժողովրդեան իմոյ: վն ափոյ միոյ գարւոյ՝ և կտորոյ միոյ հացի սպանանել զանձինս. որք ոչ էին մահապարտք. և ապրեցուցանել զանձինս, որոց ոչ էր պարտ կեալ: 'ի բարբառել յականջս ժողովրդեան. որ ախորժէ զբարբառ 20 նանրութե: Վն այնորիկ այսպէս ասէ Տր Տր՝ ահաւասիկ ես 'ի վր բարձկնեարդ. յոր դուք ժողովէիք զանձինս. և պատառեցից զայդ 'ի բազկաց ձերոց. և առաքեցից զանձինսն՝ զորս դուքն 21 թիւրէիք 'ի ցրումն: Եւ պատառեցից զգլխադիրս ձեր. և ապրեցուցից զժողովուրդ իմ 'ի ձեռաց ձերոց. և ոչ ևս եղիցին 'ի ձեռս ձեր 'ի ժողովս. 22 և ծանիջիք՝ զի ես եմ Տր: Փոխանակ զի խոտորէիք զսիրտ արդարոցն անիրաւութբ. և իմ ոչ էր թիւրեալ զնա. և զօրացուցանէիք զձեռս անօրինին չդառնալ անօրինին յանօրէնութենէ իւրմէ. և 'ի ճանապարհաց իւրոց չա-23 րաց՝ և կեալ: Վն այնորիկ զսուտս մի ևս տեսանիցէք. և ըղձութիւնս այլ մի ևս ըղձանայցէք. և ապրեցուցից զժողովուրդ իմ 'ի ձեռաց ձերոց. և ծանիջիք. թէ ես եմ Տր:

## ԳԼ: ԺԴ:

1 Եւ եկին առ իս 'ի ծերոցն Իէլի. և 2 նստան առաջի իմ: Եւ եղև 3 բան Տն առ իս՝ և ասէ: Որդի մարդոյ: արքդ այդոքիկ եդին զխորհուրդս իւրեանց 'ի սիրտս իւրեանց. և զտանջանս անիրաւութեց իւրեանց եդին առաջի երեսաց իւրեանց. թէ իցէ, տալով տաց դոցա պատասխանի:

4 Վն այնորիկ խօսեա՛ց ընդ նոսա՝ և ասասցես. այսպէս ասէ ադօնայի Տր: այր ոք՝ այր ոք 'ի տանէդ Իսրայէլի. որ դիցէ զխորհուրդս իւր 'ի սրտի իւրում. և զտանջանս անիրաւութե իւրոյ կարգեսցէ առաջի աչաց իւրոց. և եկեսցէ առ մարգարէ հարցանել նմա՛ յինէն. ես Տր՝ պատասխանի տացնմա ըստ այնմ 5 զոր 'ի մտի ունիցի: Զի մի խոտորեսցեն զտունդ Իէլի՝ ըստ օտարացե-լոց սրտից իւրեանց յինէն 'ի գնացս 6 իւրեանց: Վն այնորիկ ասա՛ տանդ Իէլի. այսպէս ասէ Տր՝ Տր Ած. դարձա՛յք և դարձարո՛ւք 'ի գնայից ձերոց. և յամ ամպարշտութեց ձերոց. և դար-7 ձուցէք զերեսս ձեր առ իս: Վասնզի այր ոք՝ այր ոք 'ի տանէդ Իէլի. յեկաց և պանդխտացդ Իէլի՝ որ օտարասցի յինէն. և դիցէ զխորհուրդս իւր 'ի սրտի իւրում. և զտանջանս անօրէնութե

իւրոյ

իւրոյ կարգեսցէ առաջի երեսաց իւրոց. և եկեսցէ առ մարգարէ հարցանել նովաւ զիս. ես Տր̃ պատասխանի տաց նմա ըստ այնմ, զոր 'ի միտի ունիցի: 8 * Եւ հաստատեցից զերեսս իմ 'ի վերայ մարդոյն այնորիկ. և եդից 'ի նշան՝ և յապականութի. բարձից զնա 'ի միջոյ ժողովրդեան իմոյ. և ծանիջիք՝ զի ես եմ Տր̃: 9 * Եւ մարգարէ որ՝ թէ խաբեսցի՝ և խօսեսցի զբան ինչ. ես Տր̃ մոլորեցուցից զմարգարէն զայն. և ձգեցից զձեռն իմ 'ի վր̃ նր̃. և սատակեցից զնա 'ի միջոյ ժողովրդեան իմոյ իէլի: 10 * Եւ ընկալցին զանիրաւութիւն իւրեանց ըստ անիրաւութե հարցողին. նոյնպէս և անիրաւութի մարգարէին եղիցի: 11 * Զի մի ևս մոլորեսցի տունն իէլի յինէն. և զի մի ևս պղծեսցին յա̃մ յանցանս իւրեանց: և եղիցին ինձ 'ի ժողովուրդ. և ես եղէց նոցա յԱ̃Ծ՝ ասէ ադօնայի Տր̃: 12 * Եւ եղև բան Տն̃ առ իս՝ և ասէ: 13 * Որդի մարդոյ. երկիր մի՝ որ յանցանիցէ ինչ ինձ յանցանս. և ձգեցից զձեռն իմ 'ի վր̃ նր̃. և խորտակեցից զհաստատութի հացի նորա. և արձակեցից 'ի վր̃ նորա սով. և բարձից 'ի նմանէ զմարդ և զանասուն: 14 * Եւ եթէ իցեն արքն այնոքիկ երեքին 'ի միջի նր̃, նոյ, յոբ, և դանիէլ. նք̃ արդարութե̃ն իւրեանց ապրեսցին՝ ասէ ադօնայի Տր̃: 15 * Եւ եթէ գազանս չարս ածից 'ի վր̃ երկրին. և պատժեցից զնա՝ և եղիցի յապականութի. մինչև անց ոչ լինիցի ը̃նա յերեսաց գազանաց: 16 * Եւ այնք արք 'ի միջի նր̃ իցեն. կենդանի եմ ես՝ ասէ ադօնայի Տր̃: եթէ իցեն ուստերք նոցա և դստերք, ոչ ապրեսցին՝ այլ ինքեանք ապրեսցին. և երկիրն եղիցի 'ի սատակումն: 17 * Եւ եթէ սուր ածից յերկիրն յայն. և ասացից սրոյն անցանել ընդ երկիրն. և բարձից 'ի նոցանէ զմարդ՝ և զանասուն: 18 * Եւ արքն այնք երեքեան 'ի միջի նր̃ իցեն. կենդանի եմ ես՝ ասէ ադօնայի Տր̃. ոչ ապրեցուսցեն զուստերս՝ և զդստերս. բայց թէ ինքեանք միայն ապրեսցին: 19 * Եւ եթէ մահ առաքեցից յերկիրն յայն. և հեղից զսրտմտութի իմ 'ի վր̃ նորա. արեամբ սատակել 'ի նմանէ զմարդ՝ և զանասուն: 20 * Եւ նոյ, և յոբ, և դանիէլ 'ի միջի նր̃ իցեն. կենդանի եմ ես ասէ ադօնայի Տր̃՝ եթէ իցեն ուստերք և դստերք նց̃՝ մի̃ մնասցեն. այլ նոքա արդարութե̃ զանձինս իւրեանց ապրեցուսցեն: 21 * Այսպէս ասէ ադօնայի Տր̃. և եթէ զչորեսին իսկ զանհնարին վրէժսն արձակեցից. զսուր. և զսով. և զգազանս չարս. և զմահ 'ի վր̃ ե̃նմի, սատակել 'ի նմանէ զմարդ և զանասուն: 22 * Մնասցեն ապրեալքն 'ի նմա̃ հանցեն զուստերս և զդստերս իւրեանց ահաւասիկ ընդ նոսա ելցեն առ ձեզ. և տեսջիք զճանապարհս նց̃. և զխորհուրդս նոցա. և զղջասջիք 'ի վերայ չարեացն՝ զոր ածի 'ի վր̃ ե̃նմի. զա̃մ չարիսն զոր ածի 'ի վր̃ նց̃: 23 * Եւ մխիթարեսցեն զձեզ. զի տեսանիցէք զճանապարհս նոցա՝ և զխորհուրդս նց̃. և 'ի միտ առնուցուք՝ եթէ ոչ տարապարտուց արարի զա̃մ՝ զոր ինչ արարի ընդ նոսա՝ ասէ ադօնայի Տր̃:

Եզե. 13.3.

Եզե. 4.16: և 5.16.

## Գլ: ԺԵ:

Մասն փայտի Որթոյն:

1 Եւ եղև բան Տն̃ առ իս՝ և ասէ: 2 * Որդի մարդոյ: զի՞նչ լինիցի փայտ որթոյն՝ յա̃մ փայտից ոստից. 3 որք են 'ի փայտս անտառի: * Միթէ առնուցուն 'ի նմանէ փայտ մի առնել գործ ինչ. կամ առնուցուն 'ի նմանէ ցից մի կախել զնմանէ զանօթ ինչ: 4 * Բայց զի 'ի հրոյ ծախս տուեալ է: զի ամ յամէ զհօտ նորա ծախէ հուր. և պակասի իսպառ. միթէ պիտանացու ինչ է 'ի գործ: 5 * Եւ եպէտ և նոյնպէս ողջոյն հանիցի, չէ ինչ պիտոյ 'ի գործ. ապա թէ հրոյ ձարակ լինիցի իսպառ. և ոչի՞նչ ամենևին պիտանացու 'ի գործ: 6 * Վա̃յ այսորիկ այսպէս ասէ ադօնայի Տր̃. ո̃պ զփայտ որթոյն 'ի փայտս անտառի ետու ձարակ հրոյ. 7 այնպէս տաց զբնակիչս ե̃նմի: * Եւ հաստատեցից զերեսս իմ 'ի վր̃ նոցա. 'ի հրոյ ելցեն՝ և հուր կերիցէ զն̃ա. և ծանիցեն թէ ես եմ Տր̃. 'ի հաստատել ինձ զերեսս իմ 'ի վերայ նոցա: 8 * Եւ տաց զերկիրն յապականութի. փոխանակ զի անկան ընդ յանցանօք՝ ասէ ադօնայի Տր̃:

## Գլ: ԺԶ:

1 Եւ եղև բան Տն̃ առ իս՝ և ասէ: 2 * Որդի մարդոյ՝ դի՛ր զվկայութի 3 ե̃նմի զանօրէնութեանց նր̃: * Եւ ասասցես. այսպէս ասէ ադօնայի Տր̃ ե̃նմ. արմատ քո՝ և ծնունդ յերկրէ քանանացւոց. և հայր քո ամօրհացի. և մայր 4 քո քետացի: * Եւ ծնունդն քո յորում աւուր ծնար. ոչ պնտեցին զպորտ քո. և ջրով ոչ լուացար 'ի փրկութիւն. և աղիւ ոչ յաղեցար. և 'ի խանձարուրս 5 ոչ պատեցար: * Եւ ոչ խնայեաց ակն իմ 'ի քեզ. և ոչ արարի քեզ ինչ մի յայսմ ամէ զգուշանալ. թէ գուցէ ան_

անցանիցէ ինչ ընդ քեզ: և ընկեցեալ
դնէիր ընդ երեսս դաշտին. վն խոտոր
նակ միոյ քոյ՝ յաւուրն յորում ծնար:
*Անցի առ քև. և տեսի արեամբ թա 6
թաւեալ: և ասացի ցքեզ. կենդանաս
ջիր յարենէ քումմէ. և կեանք քո յա
րենէ. բազմասջիր. *Քանզի իբրև 7
զբոյս ագարակի ետու զքեզ՝ և բազմա
ցար՝ և մեծացար. և եկեալ մտեր դու
'ի քաղաքս քաղաքաց: ստինք անկան
քոյ՝ և մազք արձակեցան. և դու էիր
մերկ՝ և խայտառակ: *Եւ եկի՝ և հա 8
սի 'ի վերայ քո. և տեսի զքեզ՝ զի հա
սեալ էր ժամանակ քո. և ժամանակ
խախտողաց քոյ: տարածեցի զթևս իմ
'ի վն քո. և ծածկեցի զխայտառակու
թի քո: և երդուայ քեզ երդումն. և
ուխտեցի ընդ քեզ՝ ասէ ադոնայի Տր.
և եղեր ինձ: *Եւ լուացի զքեզ ջուրբ. 9
և սրբեցի զքեզ յարենէ քումմէ. և
օծի զքեզ իւղով: *Եւ զգեցուցի քեզ 10
պէսպէսս. և ագուցի քեզ երկնագոյն.
և ածի ընդ մէջ քո զբեհեզ. և արկի
զքև մնդուս: *Եւ զարդարեցի զքեզ 11
զարդու. և եդի ապարանջանս 'ի ձեռս
քո. և քառամանեակ 'ի պարանոց քո:
*Եդի քեզ գինդս. և գորշապահինդս 12
յականջս քո. և պսակ պարծանաց 'ի
գլուխ քո: *Եւ զարդարեցար 'ի զարդ 13
ուկւոյ և արծաթոյ. և հանդերձ քո
բեհեզ. և զառնաճուխս և ճաճանչա
ճուխս: և կերեր նաշիհ՝ և իւղ՝ և մեղր.
և եղեր գեղեցիկ յոյժ յոյժ. և դրդե_
ցար 'ի դրդամս թագաւորութե:
*Եւ ել անուն գեղեցկութե քոյ ընդ 14
ամ ազգս: զի էր կատարեալ վայելչու
թի գեղոյ քոյ. զոր յօրինեցի 'ի վերայ
քո. ասէ ադոնայի Տր: *Եւ դու գե 15
ղապանծ եղեր 'ի գեղ քո. և պոռնկե_
ցար յանուն քո. և տարածեցեր զպոռն
կութի քո առ ամ անցաւորս: (որոց
ոչ լինիւր այնպիսի ինչ: )*Եւ առեր 16
'ի հանդերձից քոց. և արարեր քեզ
կուռս կարկատունս. և պոռնկեցար
ընդ նա. և մի մտցես անդր: զի ոչ էին
և ոչ լիցին: *Եւ առեր զսպաս պար_ 17
ծանաց քոց յոսկւոյն իմոյ և յարծա_
թոյ՝ զոր ետու քեզ. և արարեր քեզ
պատկերս արուականս՝ և պոռնկեցար
ընդ նոսա: *Եւ առեր զհանդերձ գե 18
ղեցիկ քո, և արկեր զնոքօք. և զիւղն
իմ՝ և զխունկս եդեր առաջի երեսաց
նց: *Եւ զհացն իմ՝ զոր ետու քեզ՝ և 19
զնաշիհն՝ և զիւղ՝ և զմեղր՝ զոր ջամ_
բեցի քեզ՝ եդեր առաջի երեսաց նց
'ի հոտ անուշից: *Եւ եղև յետ այսո_ 20
րիկ՝ ասէ ադոնայի Տր: *Առեր զուս_
տերս քո, և զդստերս՝ զորս ինձ ծնար՝

զոհեցեր նոցա 'ի սպառածումն. իբրև
փոքր ինչ համարեցար զպոռնկութիւն:
21 *Եւ զեներ զորդիսն իմ. և արարեր
22 զնս նց ընծայս: *Եւ այն անհնարին
եղև քան զամ պոռնկութիս և պղծ_
ծութիս քո. և ոչ յիշեցեր զաւուրս
տղայութե քոյ՝ 'ի ժամանակի յորում
էիր մերկ և խայտառակեալ. և թօ_
թափեալ յարեան քում, ուստի կեն_
23 դանացար: *Եւ եղև յետ ամ չարեացն
քոց՝ վայ, վայ քեզ, ասէ ադոնայի Տր:
24 *Եւ շինեցեր դու քեզ տուն պոռն_
կութե. և արարեր քեզ բագին յամ
25 հրապարակս քո: *Եւ 'ի գլուխ ամ
ճանապարհաց քոց շինեցեր զպոռն_
կոցս քո. և ապականեցեր զգեղ երե_
սաց քոց. և լայնեցար ամ անցաւորաց
ճանապարհի: և յաճախեցեր զպոռն_
26 կութիս քո: *Եւ պոռնկեցար ընդ
որդիսն եգիպտացւոց սահմանակիցս
քո՝ ընդ մեծամարմինս: և բազմապա_
տիկ պոռնկեցար՝ զի զիս բարկացուս_
27 ցես: *Արդ՝ ես ձգեցից զձեռն իմ 'ի
վն քո. և բարձից զկրաւունս քո. և
մատնեցից զքեզ 'ի ձեռս ատելեաց
քոց. դստերացն այլազգեաց՝ որք թիւ_
րեցին զքեզ 'ի ճանապարհէ քումմէ:
28 *Ապարշտեցար. և պոռնկեցար ընդ
որդիսն ասորեստանեայց. սակայն և
այնպէս ոչ յագեցար. յաճախեցեր 'ի
պոռնկութիս քո. սակայն և այնպէս
29 ոչ յագեցար: *Յաճախեցեր դաշինս
ընդ երկիրն քանանու՝ և քաղդէաց_
ւոց. սակայն և այնպէս ոչ յագեցար:
30 *Զինչ արարից ընդ դստերս քո՝ ասէ
ադոնայի Տր՝ յետ գործելոյ քոյ զայդ
ամ գործս կնոջ պոռնկի. զի պոռնկե
ցար բազմապատիկ ընդ դստերսն քո:
31 *Եւ շինեցեր պոռնկոցս 'ի գլուխս
ամ ճանապարհաց. և կոթողս կոթող_
էիր յամ հրապարակս. և ոչ եղեր իբրև
զկին պոռնիկ. որ ժողովէ զվարձս:
32 *Զի ամ կին պոռնիկք նմանօղք քո.
որք հնայցեն ընդ արամբ իւրով. ոչ
առնուն զվարձս յառնէ իւրմէ. և տայ
33 վարձս համանեաց իւրոց: *Ամենայն
պոռնիկք կապէին առնուն անձանց
իւրեանց. և դու տայիր վարձս սեղե_
խաց քոց: և օղերձէիր զնս գալ առ քեզ
յամ կողմանց 'ի պոռնկութիս քո:
34 *Եւ եղև քեզ խոտորնակի քան զամ
կանանց 'ի պոռնկութե քում. և յետ
քո ոչ պոռնկեցան: զի նոքա կապէին
առնուն յարանց. և դու վարձս տայիր
սեղեխաց. և եղև քեզ այն 'ի խոտորնա
35 կի: *Վասն այդորիկ պոռնկիդ. լուր
36 զպատգամս Տն: *Այսպէս ասէ ադո
նայի Տր. փոխանակ զի հեղեր՝ արկեր

զպղծնձն քո ։ և յայտնեսցի ամօթ-
պռոնկութիւն քո առաջի հոմանեաց
քոց ․ և յամ խորհուրդս անօրէնութեանց
քոց ․ և յարիւնս որդւոց քոց՝ զորս տայ-
իր նոցա ։ * Վս այնորիկ ահաւասիկ 37
ես ժողովեցից ՚ի վ͞ր քո զամ հոմանիս
քո ․ ընդ որս դուն խառնակէիր ․ յա-
ւուցից ՚ի վերայ քո զամ սիրելիս՝ և
զատելիս քո ․ և ժողովեցից, պատեցից
զնս շուրջ զքև ․ և յայտնեցից զչարիս
‖Վ յայտ․ քո առաջի նց ․ ‖ և տեսցեն զամ խայ-
23․ 10․ տառակութիւնս քո ։ * Եւ խնդրեցից ՚ի 38
քէն վրէժ շնացելոյ՝ և արիւնահեղի ․
և եդից զքեզ յարիւն քո ․ և եդից զքեզ
յարիւն սրտմտութեան և նախանձու ։
* Եւ մատնեցից զքեզ ՚ի ձեռս նոցա ․ 39
և կործանեսցեն զպոռնկոցս քո ․ և քա-
կեսցեն զկոթողս քո ․ և մերկասցեն ՚ի
քէն զհանդերձս քո ․ և առցեն զսպաս
պարծանաց քոց ․ և թողցեն զքեզ
մերկ՝ և խայտառակեալ ։ * Եւ ածցեն 40
՚ի վ͞ր քո ամբոխ՝ և քարկոծեսցեն զքեզ
վիմօք ․ և կոտորեսցեն զքեզ սրովք
‖4 Թագ․ իւրեանց ։ * ‖ Եւ այրեսցեն զտունս քո 41
25․ 9․ հրով ։ արասցեն ՚ի քեզ վրէժխնդրու-
թիւն առաջի կանանց բազմաց ․ և դար-
ձուցից զքեզ ՚ի պոռնկութենէ քումմէ ․
Եւ հան- և վարձս ոչ ևս տացես նց ։ * Եւ արձա- 42
դարտե- կեցից զսրտմտութիւն իմ ՚ի վ͞ր քո ․ և
ցուցից բարձցի նախանձն իմ ՚ի քէն ․ և հան-
գեայց՝ և ոչ ևս հոգացայց ։ * Փոխա- 43
նակ զի ոչ յիշեցեր զօրն տղայութեան
քոյ ։ և տրտմեցուցանէիր զիս ՚ի վերայ
ամի այդորիկ ․ և ես ահաւասիկ զճանա-
պարհացն քոց ետու ՚ի գլուխ քո ․ ասէ
ադոնայի Տր Տր ․ և այնպէս արարեր
ամպարշտութիւն ՚ի վ͞ր ամ անօրէնու-
թեանց քոց ։ * Այս ամ՝ զոր մրմնջէին 44
զքէն առակօք՝ և ասէին ․ եթէ որպէս
մայրն ․ նոյնպէս և դուստրն ։ * Արդ 45
դուստր մօրն քոյ դու ․ որ մերժեաց
զայր իւր՝ և զորդիս իւր ։ և քոյր քերցն
քոյ ․ որք մերժեցին զարս իւրեանց՝ և
զորդիս իւրեանց ։ մայր ձեր քետացի ․
և հայր ձեր ամորհացի ։ * Եւ քոյր ձեր 46
սամարիայ երէց շամրին, ինքն և դստերք իւր՝ որ
բնակեալ է ՚ի ձախմէ քումմէ ․ և քոյր
քո քետացի կրտսեր ․ որ բնակեալ է
ընդ աջմէ քումմէ ․ սոդոմ և դստերք
իւր ։ * Սակայն և ոչ ըստ ճանապար- 47
հաց նց գնացեր ․ և ոչ ըստ անօրէնու-
թեանց նց արարեր ․ զի փոքր մի առաւել
գտար քան զնս յամ ճանապարհս ։
* Կենդանի եմ ես՝ ասէ ադոնայի Տր՝ 48
եթէ արար ինչ աւելի քոյր քո ․ ինքն՝
և դստերք իւր ․ քան զոր արարեր դու՝
‖Ծնն․ և դստերք քո ։ * ‖ Բայց այս էր անօրէ- 49
19․ 24․ նութիւն սոդոմայ քեռ քոյ ։ ամբարտաւ-
անութիւն ՚ի լիութեան հացի՝ և յղփութեան
գինւոյ ։ փափկանայր ինքն և դստերք
իւր ․ այնու առաւել էր ինքն և դըս-
տերք իւր ․ և զձեռն յաղքատն և ՚ի
50 տնանկն ոչ կարկառէին ։ * Մեծա-
մտէին և գործէին զանօրէնութիւնս ա-
ռաջի իմ ․ և իբրև զայն տեսի՝ բարձի
51 զնս ։ * Եւ շամրին զկէս յանցանաց սամարիայ
քոց ոչ յանցեաւ ․ և յաճախեցեր զանօ-
րէնութիւնս քո առաւել քան զնոսա ․ և
արդարացուցեր զքորս քո յամ անօ-
52 րէնութիւնս քո, զոր արարեր ։ * Եւ արդ՝
ընկալ զտանջանս քո ․ որ ապականե-
ցեր զքորս քո անօրէնութեամբքն ․ զոր
անօրինեցար առաւել քան զնոսա ․ և
արդարացուցեր զնս յոյժ քան զքեզ ։
և արդ՝ յամօթ լեր ․ և կրեա զանար-
գանս ՚ի յարդարացուցանել զքորսն քո
53 քան զքեզ ։ * Եւ դարձուցից զդար-
ձուածս նց ․ զդարձուածս սոդոմայ՝ և
զդստերաց իւրոց ․ և դարձուցից զդար-
ձուածս շամրինի ․ և զդստերաց նց ․ և սամարիայ
դարձուցից զդարձուածս քո ՚ի միջի
54 նոցա ։ * Զի ընկալցիս զտանջանս քո ․
և անարգեսցիս յամէ՝ զոր արարեր ՚ի
55 բարկացուցանել զիս ։ * Եւ քոյր քո
սոդոմ ․ և դստերք իւր անդրէն հաս-
տատեսցին ․ որպէս և էին ՚ի սկզբանէ ․ և
շամրին՝ և դստերք իւր հաստատես- սամարիայ
ցին անդրէն ․ որպէս և էին ՚ի սկզբանէ ։ և
դու, և դստերք քո հաստատեսջիք ՚ի
56 նոյն՝ որպէս և էիք ՚ի սկզբանէ ։ * Եւ եթէ
ոչ էր սոդոմ քոյր քո համբաւ ՚ի բե-
րան քո՝ յաւուրս հպարտութեան քոյ ։
57 * Մինչև յայտնեալ էին չարիքն քո ․
որպէս այժմ նախատ եղեր դստերացն
ասորւոց ․ և ամենեցուն՝ որք շուրջ
զնովաւ էին դստերք այլազգեաց ։ և
58 պատեալ շուրջ զքև ։ * Արդ՝ կրեա
զամպարշտութիւնս քո՝ և զանօրէնութիւն
59 քո՝ ասէ Տր ։ * Զի այսպէս ասէ ադո-
նայի Տր ․ և արարից ընդ քեզ՝ որպէս
արարերն ․ որպէս անարգեցեր զայն ամ՝
60 անցանել զուխտիւ իմով ։ * Եւ ոչ յի- Եւ ես յի-
շեցից զուխտն իմ, որ ընդ քեզն էր շեցից
յաւուրս տղայութեան քոյ ։ և կանգնե-
61 ցից ինձ ուխտ յաւիտենական ։ * Եւ Եւ յիշես-
յիշեցից զճանապարհս քո՝ և անար- ցես
գեսցիս ․ յորժամ զմտաւածիցես ըզ-
քորսն զերիցունսն, հանդերձ կրտսե-
րօքն ։ և տաց զնս քեզ ՚ի փորձ ․ և ոչ ՚ի
62 դաշնաւորս ։ * Եւ կանգնեցից ես
զուխտ իմ ընդ քեզ ․ և ծանիցես թէ
63 ես եմ Տր ։ * Զի յիշեսցես՝ և ամա-
չեսցես ․ և մի ևս լիցի քեզ բանալ զբե-
րան քո ․ առաջի անարգանաց քոց ՚ի
քաւել ինձ զամ գործս քո՝ զորս գոր-
ծեցեր ․ ասէ ադոնայի Տր ։

## Գլ. ԺԷ.

1 Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ. 2 *Որդի մարդոյ՝ պատմեա՛ զպատմութի. եւ խօսեա՛ց զառակ առ տունն Իղի. 3 *Եւ ասասցես՝ այսպէս ասէ ադօնայի Տր. արծուի՛ն մեծ՝ մեծաթեւ՝ երկայնատարած՝ լիամագիլ. որ խորհեցաւ մտանել ՚ի լիբանան. եւ էառ յընտիր ընտիր մայրիցն. 4 *Եւ էհան զմատաղատունկն՝ եւ տարաւ յերկիրն քանանացւոց. եւ տնկեաց զնա ՚ի պարսպաւոր քաղաքի. 5 *Եւ էառ ՚ի սերմանէ երկրին. եւ ցանեաց ընդ երեսս դաշտին զտունկ մանրատունկ՝ ընդ առատութբ ջրոյն. երեւելի առնել կարգեաց զնա. 6 *Բուսաւ՝ եւ եղեւ յորթ տկար. փոքր մեծութբ. յերեւիլ ուռոց իւրոց ՚ի նմա՝ եւ արմատք նր ՚ի ներքոյ նր էին. եւ եղեւ յորթ մեծ. էհան անդողկոյզս. եւ արձակեաց զբարունակս իւր. 7 *Եւ երեւեցաւ այլ արծուի մեծ՝ մեծաթեւ՝ բազմամագիլ. եւ ահա որթս այս պատեալ էր զնովաւ՝ եւ արմատք սորա ՚ի նա՝ եւ ուռք նր ՚ի ներքոյ նր. եւ առաքեաց արբուցանել զնա, համդերձ բուսովք տնկոյ նորա ՚ի գեղեցիկ դաշտի. 8 *Ընդ բազում ջրովք պարարեսցի. արձակել շառաւիղս, եւ բերել պտուղս, եւ լինել յորթ մեծ. 9 *Ասա այսորիկ ասա՛. այսպէս ասէ ադօնայի Տր. եթէ իցէ յաջողեսցի. ո՞չ ապաքէն արմատք փափկութե նր, եւ պտուղ նր նեխեսցի. եւ չորասցին ամ շառաւիղք նր. եւ ո՛չ բազկաւ մեծաւ՝ եւ ո՛չ ազգաւ բազմաւ բուռն հարկանել՝ եւ խլել զնա յարմատոց իւրոց. 10 *Եւ արդ՝ պարարեսցի, մի՛ յաջողեսցի. ո՞չ ապաքէն ընդ մերձենալ հողմոյ խորշակի՝ ցամաքեսցի համդերձ բուսովք՝ եւ շառաւիղօք իւրովք. 11 *Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ. որդի մարդոյ. 12 *Ասա՛ ցտունդ Իղի տուն դառնացողաց՝ ո՛չ գիտէք զի՞նչ է այդ՝ զոր ասացիդ. յորժամ եկեսցէ արքայն բաբիլացւոց յէմ. առցէ զթագաւոր նր եւ զիշխանս. եւ տարցէ զնոսա առ ինքն ՚ի բաբիլոն. 13 *Եւ առցէ ՚ի զաւակէ թագաւորութեն. եւ դիցէ ընդ նմա ուխտ. եւ անցուսցէ նզովս. եւ զիշխանս երկրին առցէ. 14 *Լինել ՚ի թագաւորութի տկար՝ ամենեւին ո՛չ բարձրանալ. պահել զուխտ նր՝ եւ կալ ՚ի նմին. 15 *Եւ ապստամբեսցի ՚ի նմանէ. առաքել հրեշտակս յեգիպտոս. տալ նմա երիվարս՝ եւ զօրս բազումս. եթէ իցէ յաջողեսցի. եթէ իցէ ապրեսցին՝ որք առնեն իրս հակառակս. եւ անցանէ զուխտն. 16 եթէ իցէ ապրեսցի. *Կենդանի եմ ես՝ ասէ ադօնայի Տէր. եթէ ոչ եւ ՚ի տեղւոջ յորում թագաւորն թագաւորեցոյց զնա. որ անարգեաց զնզովսն իմ. եւ էանց ըստ ուխտն իմ որ ընդ նմա. ՚ի մէջ բաբիլոնի վախճանեսցի. 17 *Եւ ո՛չ զօրութբ մեծաւ. եւ ո՛չ գնդաւ բազմաւ տացէ ընդ նմա պատերազմ փարաւոն. պատնէշս՝ եւ նետակալս չինեսցէ սատակել զանձինս բազմաց. 18 *Զի անարգեաց զերդումն՝ եւ էանց զուխտիւն. եւ ահա ետու ՚ի ձեռս նր. եւ արարի զայս ամ ընդ նմա. մի՞թէ ապրեսցի. 19 *Ասա այսորիկ ասա՛. այսպէս ասէ ադօնայի Տր. կենդանի եմ ես ասէ ադօնայի Տր. եթէ ոչ ըստ ուխտին իմում, զորով էանց. եւ ըստ երդման իմոյ՝ զոր անարգեաց. հատուցից ՚ի գլուխ նր. 20 *‖Եւ սփռեցից ՚ի վր նր զվարմ իմ. եւ ըմբռնեսցի ընդ պաշարմամբ իմով. եւ ածից զնա ՚ի բաբիլոն. եւ անդ դատեցայց ընդ նմա ըստ անիրաւութե նր. զոր անիրաւեցաւ առ իս. 21 *Եւ ամ խուսափանաց նր, յամ պատերազմունս նր սրով անկցին. եւ զմնացորդս նր ընդ ամ հողմս ցրուեցից. եւ ծանիջիք՝ զի ես Տր խօսեցայ. 22 *Ասա այսորիկ այսպէս ասէ ադօնայի Տր՝ եւ առից ես յընտիր ընտիր մայրիցն բարձու աւանդակին. եւ տաց ես ՚ի գլխոյ շառաւիղաց նր ՚ի սիրտս նոցա. քշտեցից եւ տնկեցից ՚ի լերինն բարձու. 23 *Եւ կախեցից զնա զբարձրացեալ լեռնէն Իղի. տնկեցից, եւ ոստս արձակեսցէ, եւ պտուղ բերիցէ, եւ եղիցի մայր մեծ. եւ հանգիցեն ընդ նովաւ ամ գազանք. եւ ամ հաւք թռչունք ընդ հովանեաւ նորա դադարեսցեն. եւ բարունակք նր ՚ի նմին հաստատեսցին. 24 *Եւ ծանիցեն ամ փայտք դաշտի՝ թէ ես եմ Տէր. որ խոնարհեցուցանեմ զփայտ բարձրացեալ. եւ բարձրացուցանեմ զփայտ խոնարհեցեալ. ցամաքեցուցանեմ զփայտ դալար. եւ դալարեցուցանեմ զփայտ ցօսացեալ. ես Տր խօսեցայ՝ եւ արարի.

‖ Եզ. 12. 13. Անդ. 32. 3.

## Գլ. ԺԸ.

1 Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ. 2 *Որդի մարդոյ՝ զի՞նչ է ձեզ առակդ այդ ՚ի մէջ որդւոցն Իղի՝ զոր ասեն. ‖Եթէ հարքն աղուխ կերին. եւ որդւոցն ատամունք առան. 3 *Կենդանի եմ ես՝ ասէ ադօնայի Տր. եթէ լիցի առակդ այդ՝ որ ասի ՚ի մէջ Իղի. 4 *Զի ամ անձինք իմ են. որպէս անձն հօր. նոյնպէս եւ անձն որդւոյ. անձն որ մեղիցէ՝ նոյն եւ մեռցի. 5 *Այր մարդն

‖ Երեմ. 31. 29.

որ արդար իցէ՝ և առնիցէ զիրաւունս և զարդարութիւն ։ 6 *'Ի վ՟ր լերանց զոհեալ ոչ ուտիցէ․ և զաչս իւր 'ի կուռս տանն ի՟ղի ոչ արձակիցէ․ և զկին ընկերի իւրոյ ոչ ապականիցէ․ և 'ի կին իւր ապահար ոչ մերձենայցէ ։ 7 * Եւ մարդոյ բռնան ոչ լինիցի ։ զգրաւ պարտապանի՝ դարձուցանիցէ ։ զյափշտակութիւն ոչ յափշտակիցէ․ ‖ զհաց իւր տացէ քաղցելոց․ և զմերկն զգեցուցանիցէ ։ 8 * Եւ զարծաթ իւր 'ի վաշխու ոչ տայցէ․ և տոկոսեօք անդրէն ոչ պահանջիցէ ։ յանիրաւութենէ զաչս իւր դարձուցանիցէ․ դատաստան արդար առնիցէ ընդ այր և ընկեր իւր ։ 9 * Ըստ հրամանաց իմոց գնայցէ․ զիրաւունս իմ պահիցէ․ և առնիցէ զն՟ա․ արդար է նա՝ կենօք կեցցէ՝ ասէ ադօնայի Տ՟ր ։

10 * Եւ եթէ ծնանիցի որդի՝ խառնագնաց՝ արիւնահեղ․ և առնիցէ զմեղս ։ 11 * 'Ի ճանապարհս հօր իւրոյ արդարոյ ոչ գնաց․ և 'ի վ՟ր լերանց եկեր զոհեալ․ և զկին ընկերի իւրոյ պղծեաց ։ 12 * Եւ զաղքատն՝ և զտնանկն յաղթահարեաց․ և զյափշտակութիւն յափշտակեաց․ և զգրաւ ոչ դարձոյց․ և 'ի պաշտօն դից զաչս իւր արձակեաց․ զանօրէնութիւն գործեաց ։ 13 * Զարծաթ իւր 'ի վաշխու ետ․ և վաշխիւք՝ և տոկոսեօք պահանջեաց․ նա մի կեցցէ․ որ զայն զա՟մ անօրէնութիւն արար՝ մահու մեռցի․ և արիւն ն՟ր 'ի վ՟ր նորին եղիցի ։

14 * Եւ եթէ ծնանիցի որդի՝ և տեսանիցէ զա՟մ մեղս հօր իւրոյ՝ զոր գործեաց․ երկիցէ՝ և ոչ արասցէ զնոյնս ։ 15 * 'Ի վերայ լերանց զոհեալ ոչ եկեր․ և զաչս իւր 'ի խորհուրդս տանն ի՟ղի ոչ արձակեաց․ և զկին ընկերի իւրոյ ոչ ապականեաց ։ 16 * Եւ զմարդ ոք ոչ յաղթահարեաց․ և զգրաւ ոչ գրաւեաց․ և զյափշտակուն ոչ յափշտակեաց․ զհաց իւր ետ քաղցելոց․ զմերկն զգեցոյց ։ 17 * Եւ յանիրաւութենէ դարձոյց զձեռն իւր․ վաշխս և տոկոսիս ոչ էառ․ զարդարութիւն գործեաց․ և ըստ հրամանաց իմոց գնաց․ նա մի վախճանեսցի յանիրաւութիւնս հօր իւրոյ․ այլ կենօք կեցցէ ։ 18 * Բայց հայրն ն՟ր՝ եթէ նեղելով նեղիցէ, և յափշտակելով յափշտակիցէ զեղբայր իւր, հակառակութեան գործս գործեաց 'ի մէջ ժողովրդեան իմոյ․ և մեռցի յանիրաւութեան իւրում ։

19 * Եւ ասէ՝ թէ զի՞ է․ զի ոչ էհաս անիրաւութիւն հօրն որդւոյն ։ զի որդին՝ արդարութիւն և ողորմութիւն արար՝ զա՟մ օրէնս իմ պահեաց, և արար զնոսա՝ կենօք կեցցէ ։ 20 *‖ Անձն որ մեղիցէ, նոյն մեռցի ։ և որդի զհօրն զմեղս մի առցէ ։ և մի հայր առցէ զանիրաւութիւն որդւոյ իւրոյ ։ արդարութիւն արդարոյն 'ի վ՟ր նորին եղիցի․ և անօրէնութիւն անօրինին 'ի վերայ նորին եղիցի ։

21 * Եւ անօրէնն եթէ դարձցի յա՟մ անօրէնութեանց իւրոց, զոր արար․ և պահեսցէ զա՟մ պատուիրանս իմ․ և արասցէ զարդարութիւն և զողորմութիւն, կենօք կեցցէ, և մի մեռցի ։ 22 * Ա՟մ մեղք ն՟ր՝ զոր գործեալ իցէ․ և ա՟մ անիրաւութիւնք իւր՝ զոր անիրաւեալ իցէ՝ մի յիշեսցին․ այլ արդարութեամբն իւրով զոր արար, կեցցէ ։ 23 *‖ Միթէ կամելով կամիցիմ զմահ անօրինին՝ ասէ Տ՟ր Տ՟ր՝ ո՟չ զդառնալ նորա 'ի չար ճանապարհէն՝ և կեալ ։ 24 * 'Ի դառնալ արդարոյն յարդարութենէ իւրմէ, և առնել զանիրաւութիւն ըստ ա՟մ անօրէնութեացն, զոր առնիցէ անօրէնն․ ա՟մ արդարութիւնք ն՟ր՝ զորս արար՝ մի յիշեսցին ։ 'Ի յանցանս իւրում, յոր անկաւ․ 'ի մեղսն իւրում, զոր մեղաւ՝ 'ի նոսին մեռցի ։

25 * Եւ ասէք՝ թէ ո՛չ յաջող է ճանապարհ Տ՟ն ։ արդ՝ լուարո՛ւք տունդ ի՟ղի․ միթէ իմ ճանապարհ ոչ իցէ յաջող ։ ո՞չ ապաքէն ձեր ճանապարհքն չեն յաջողք ։ 26 * 'Ի դառնալ արդարոյն յարդարութենէ իւրմէ, և առնել զանիրաւութիւն, մեռցի յանօրէնութեան, զոր գործեաց ։ * Եւ 'ի դառնալ անօրինին յանօրէնութենէ իւրմէ զոր արար․ և առնիցէ իրաւունս՝ և արդարութիւն, ինքն զանձն իւր ապրեցուսցէ ։ 27 * Զի ետես՝ և դարձաւ յա՟մ ամպարշտութեանցն իւրոց՝ զոր արար․ կենօք կեցցէ՝ և մի մեռցի ։ 28 * Եւ ասեն տունդ ի՟ղի․ ո՛չ ուղիղ է ճանապարհ Տ՟ն ։ մի թէ իմ ճանապարհ չիցէ ուղիղ տունդ ի՟ղի՝ ո՞չ ապաքէն ձեր ճանապարհքն չեն ուղիղք ։ 29 * Վ՟ն այսորիկ զիւրաքանչիւրոք ըստ իւրում ճանապարհի դատեցայց տունդ ի՟ղի․ ասէ ադօնայի Տ՟ր ։

30 *‖ Դարձայք՝ և դարձարո՛ւք յա՟մ ամպարշտութեանց ձերոց․ և ո՛չ լինիցին ձեզ 'ի տանջանս անիրաւութեան ։ 31 * Ընկեցէ՛ք յանձանց ձերոց զամպարշտութիւնս ձեր՝ զոր ամպարշտեցայք յիս․ և արարէ՛ք ձեզ սիրտ նոր՝ և ոգի նոր․ արարէ՛ք զա՟մ զպատուիրանս իմ ։ ընդէ՞ր մեռանիք տունդ ի՟ղի․ ասէ Տ՟ր ։ 32 *‖ Զի ո՛չ կամիմ զմահ մեղուցելոյն՝ ասէ ադօնայի Տ՟ր․ այլ զի դարձցի 'ի ճանապարհաց իւրոց չարաց․ և կեցուսցէ զանձն իւր․ արդ՝ եկա՛յք դարձարո՛ւք՝ և կեցէ՛ք ։

‖ Եսայ․ 58․7․ Մատ․ 25․35․

12․ Օրէ․ 24․16․

4 Թագ․ 14․6․ 2 Մն․ 25․4․

‖ 2 Պետ․ 3․9․ Ս․ 33․11․

‖ Մտ․ 3․1․

‖ Ս․ 23․ Ս․ 33․11․

## ԳԼ. ԺԹ.

Ողբ 'ի վերայ իշխանին Իսրայէլի.

1 Եւ դու որդի մարդոյ՝ ողբս առ 'ի վ̃ր իշխանին Իղ̃ի. 2 * Եւ ասասցես. զի՞է՝ զի եղև մայր քո 'ի մէջ առիւծուց. կորիւնդ 'ի մէջ առիւծուց բազմացոյց զկորիւնս իւր. 3 * Եւ ղարդացաւ և կորիւն մի 'ի կորեանց նորա առիւծացաւ. և ուսաւ յափշտակել զյափշտակուն. և եղև մարդախանձ. 4 * Լուան զնմանէ ազգք. ըմբռնեցին զնա յապականութի. և տարան զնա գայլ 'ի բերան յերկիրն եգիպտացւոց. 5 * Եւ ետես՝ զի անջատեցաւ 'ի նմանէ. և կորեաւ յոյս նորա. և նա միւսև այլ կորիւն 'ի կորեանցն իւրոց առիւծացոյց. 6 * Եւ շրջէր 'ի մէջ առիւծուց. առիւծացաւ. և ուսաւ յափշտակել զյափշտակուն. և եղև մարդախանձ. 7 * Արասյր յանդգնութ̃բ իւրով. զքաղաքս կործանէր. և զերկիրն լրի՛ւ իւրով ապականէր մռնչելով բարբառոյ իւրոյ. 8 * Եւ յարեան 'ի վ̃ր նր̃ ազգք յիւրաքանչիւր աշխարհաց շուրջանակի. և պատեցին զնա թակարդօք յապականութի. 9 * Դայլ 'ի բերան հարին. և տարան գաւազանա՛ւ առ արքայն բաբիլացւոց. և արկին 'ի բանտ. զի մի՛ ևս լուիցի բարբառ նորա 'ի վ̃ր լերանցն Իղ̃ի. 10 * Մայր քո իբրև զորթ. և իբրև զծաղիկ նռնենեաց տնկեալ 'ի գնացս ջուրց. բոյս նր̃, և պտուղ եղև 'ի ջուրց բազմաց. 11 * Եւ եղև նր̃ գաւազան զօրութե 'ի վ̃ր ազգին իշխանաց. և բարձրացաւ մեծութ̃բ 'ի մէջ դալարաստանաց. և ետես զմեծութիւն իւր 'ի բազմութե ոստոց իւրոց. 12 * Եւ բեկաւ 'ի բարկութե̃ և յերկիր կործանեցաւ. ‖ և հողմ խորշակի ցամաքեցոյց զշառաւիղս նր̃. խնդրեցաւ 'ի նմանէ վրէժ. և ցամաքեցաւ պնտութ̃ի զօրութե նր̃. և հուր մաշեաց զնա. 13 * Եւ արդ՝ տնկեցին զնա յանապատին՝ յերկրի անջրդի. 14 * Եւ ել հուր յընտիր ընտիր գաւազանաց նորա՝ և եկեր զնա. և ոչ գոյր 'ի նմա գաւազան զօրութե. ազգ յառակս ողբասցէ. և յողբս եղիցի.

‖Ովսէ. 13.15.

## ԳԼ. Ի.

Աղ̃ ծերոց տանն Իսրայէլի.

1 Եւ եղև յամին եօթներորդի՝ յամսեանն հինգերորդի. որ օր տասն էր ամսոյն. եկին արք յորդւոց տանն Իղ̃ի. հարցանել 'ի Տե̃ և նստան առաջի իմ. 2 * Եւ եղև բան Տե̃ն առ իս՝ և ասէ. 3 * Որդի մարդոյ՝ խօսեա՛ց ը̃ ծերս տանդ Իղ̃ի՝ և ասասցես. այսպէս ասէ Ադոնայի Տր̃. եթէ հարցանել զայք դուք առ իս. կենդանի եմ ես, թէ տաց ինչ ձեզ պատասխանի՝ ասէ Ադոնայի Տր̃. 4 * Եթէ իցէ՝ խնդրեսցես վրէժ նց̃. որդի մարդոյ՝ զմեղաց հարց դոցա. 5 դի՛ր դոցա վկայութի. * Եւ ասասցես ցդոսա. այսպէս ասէ Տր̃ Ա̃Ծ. յօրէ յորմէհետէ ցանկացայ ես տանդ Իղ̃ի՝ և ծանուցայ զաւակի տանդ Յակոբայ. և ծանուցայ նց̃ յերկրին եգիպտացւոց՝ ձեռն ետու նոցա՝ և ասեմ. 6 ես եմ Տր̃ Ա̃Ծ ձեր. * Յաւուր յայնմիկ ձեռն ետու նց̃ հանել զնոսա յերկրէն եգիպտացւոց՝ յերկիրն զոր պատրաստեցի նց̃. երկիր որ բղխէ զկաթն և զմեղր. քաղցր քան զա̃մ երկիր. 7 * Եւ ասացի ցնոսա. իւրաքանչիւրոք զգարշելիս իւր յաչաց իւրոց 'ի բաց ընկեսցէ. և 'ի գնացս եգիպտացւոց մի՛ 8 պղծիք՝ ես եմ Տր̃ Ա̃Ծ ձեր. * Եւ ապստամբեցան յինէն. և ոչ կամեցան լսել ինձ. իւրաքանչիւրոք զգարշելիս իւր յաչաց իւրոց ոչ ընկեց 'ի բաց. և ըզգնացս եգիպտացւոցն ոչ թողին. և ասացի հեղուլ զսրտմտութի իմ 'ի վ̃ր նց̃. կատարել զբարկութի իմ 'ի նոսա 9 'ի մէջ եգիպտացւոց. * Բայց արարի, զի անուն իմ ամենևին մի՛ պղծեսցի առաջի ազգացն. յորոց միջի իցեն ն̃ք. յորս ծանուցայ նոցա առաջի նց̃ հանել զնոսա յերկրէն եգիպտացւոց. 10 * Եւ հանի զնոսա յերկրէն եգիպտացւոց՝ և ածի զն̃ա յանապատն. 11 * ‖ Եւ ետու նց̃ զհրամանս իմ. և զիրաւունս իմ ցուցի նց̃. զոր արասցէ մարդ՝ և 12 կեցցէ 'ի նոսա. * ‖ Եւ զշաբաթս իմ ետու նց̃ լինել նշանակ ընդ իս և ընդ նոսա. ճանաչել նոցա՝ թէ ես եմ Տր̃ որ սրբեմ զնոսա. ( և ասացի ցտունն Իղ̃ի յանապատի անդ՝ թէ 'ի հրամանս իմ գնացէ՛ք, և ոչ գնացին. և զիրաւունս իմ պահեցէք, և առնիցէք զնոսա. զոր թէ առնիցէ մարդ՝ կեցցէ նոքօք.) 13 * Եւ դառնացուցին զիս տունն Իղ̃ի յանապատին. ըստ հրամանաց իմոց ոչ գնացին. և զիրաւունս իմ մերժեցին. զոր թէ առնիցէ մարդ՝ կեցցէ նոքօք. և զշաբաթս իմ պղծեցին յոյժ. և ասացի հեղուլ զսրտմտութի իմ յա 14 նապատին սատակել զնոսա. * Եւ արարի՝ զի անուն իմ մի՛ ամենևին պղծեսցի առաջի ազգացն՝ յորոց հանի 15 զնոսա յանդիման նց̃. * Եւ ես համբարձի զձեռն իմ 'ի վ̃ր նոցա յանապատին. համօրէն չտանիլ զնոսա յերկիրն

‖Ղևտ. 18.5. Հռոմ. 10.5. ‖Ելից. 20.8. և 31.13. 2. Օրէ. 5.12.

կերն՝ զոր ետուն նց. երկիր, որ բղխէ զկաթն՝ և զմեղր. քաղցր քան զամ եր կիր : [16] * Փոխանակ զի զիրաւունս իմ մերժեցին. և ըստ հրամանաց իմոց ոչ գնացին. և զշաբաթս իմ պղծեցին. և զհետ խորհրդոց սրտից իւրեանց գնա ցին : [17] * Եւ խնայեաց 'ի նոսա ակն իմ ջնջել զնս. և ոչ արարի զնս 'ի վախ ճան յանապատին : [18] * Եւ ասացի ցնոսա յանապատին՝ ըստ կրօնից հարց ձերոց մի գնայք. և զիրաւունս նոցա մի պա հէք. և 'ի գնացս նոցա մի խառնակիք, և մի պղծիք : [19] * Ես եմ Տր Ա.Ծ ձեր՝ ըստ հրամանաց իմոց գնացէք. և զի րաւունս իմ պահեցէք՝ և արարէք զնս [20] * Եւ զշաբաթս իմ սրբեցէք. և եղիցի նշանակ ընդ իս և ընդ ձեզ. ճանաչել ձեզ թէ ես եմ Տր Ա.Ծ ձեր : [21] * Դառ նացուցին զիս. և որդիք նոցա ըստ հրա մանաց իմոց ոչ գնացին. և իրաւանց իմոց ոչ զգուշացան առնել զնոսա. զոր թէ առնիցէ մարդ՝ կեցցէ նոքօք. և զշաբաթս իմ պղծէին. և ասացի հեղուլ զսրտմտութն իմ 'ի վր նոցա յանապատին. կատարել զբարկութն իմ 'ի վերայ նոցա : [22] * Եւ դարձուցի զձեռն իմ 'ի նոցանէ. և արարի, զի անուն իմ ամենեւին մի պղծեսցի առա ջի ազգացն՝ յորոց հանի զնոսա յան դիման նց : [23] * Եւ ես ամբարձի զձեռն իմ 'ի վերայ նոցա յանապատի անդ, ցրուել զնոսա ընդ ազգս. և ցանել զնոսա ընդ գաւառս : [24] * Փոխանակ զի զիրաւունս իմ ոչ արարին. և զհրա մանս իմ մերժեցին՝ և զշաբաթս իմ պղծեցին. և զհետ խորհրդոց հարցն իւրեանց էին աչք նց : [25] * Եւ ես ետու նց հրամանս անբարիս. և իրաւունս որովք ոչ կեցցեն : [26] * Եւ պղծեցի զնս 'ի պատարագս իւրեանց ընդ անցա նել ինձ ընդ ամ՝ որ բանայ զարգանտ. զի սատակեցից զնոսա. և ծանիցեն թէ ես եմ Տր : [27] * Վասն այդորիկ խօ սեաց ընդ տանդ Իէլի, որդի մարդոյ՝ և ասասցես ցդոսա. այսպէս ասէ ադօ նայի Տր. մինչև ցայսչափ բարկացու ցին զիս հարքն ձեր յանցանօքն իւրն՝ զոր յանցեան առ իս : [28] * Եւ տարայ զնս յերկիրն՝ զոր ամբարձի զձեռն իմ տալ նոցա զնա. և տեսին անդ զամ բլուր բարձր. և զամ ծառ վարսաւոր. և զոհեցին անդ դիցն իւրեանց. և կար դեցին անդ զոհս պատարագաց իւր եանց. և արկին զխունկս անուշութե իւրեանց՝ և նուիրեցին անդ զնուէրս իւրեանց : [29] * Եւ ասացի ցնս. զի՞նչ է աբբանայդ այդ՝ յոր դուքդ մտանէք. և կոչեցին զանուն նր աբբանայ մինչև

Բար_ ձման

[30] ցայսօր ժամանակի : * Վասն այնորիկ ասա ցտունն Իէլի. այսպէս ասէ Տէր Ա.Ծ եթէ յանօրէնութն հարցն ձերոց պղծիք. և զհետ դարշելեացն նոցա [31] պոռնկիք : * Եւ 'ի պտուղս պատարա գացն ձերոց. և յընծայս որդւոցն ձե րոց. և 'ի զատուցանել որդւոցն ձերոց ածել զբոցով. պղծիք յամենայն խոր հուրդս ձեր մինչև ցայսօր ժամանա կի. և ես տայցեմ ձեզ պատասխանի տունդ Իէլի. կենդանի եմ ես՝ ասէ ադօնայի Տր. եթէ տաց ձեզ պատաս [32] խանի : * Եթէ անկցի յոգիս ձեր այդ. և ոչ լինի, ո՞ր դուքդ ասէք. թէ եղի ցուք մեք իբրև զհեթանոսս. և իբրև զազգս երկրի պաշտել զփայտս՝ և զքա [33] րինս : * Վս այդորիկ կենդանի եմ ես՝ ասէ ադօնայի Տր. եթէ ոչ հզօր ձե ռամբ և բարձրացեալ բազկաւ. և հե ղեալ ցասմամբ թագաւորեցից 'ի վր [34] ձեր : * Եւ հանից զձեզ յազգաց. և ընկալայց զձեզ յաշխարհաց՝ ուր ցր ուեալ իցէք 'ի նոսա. հզօր ձեռամբ և բարձրացեալ բազկաւ. և հեղեալ ցաս [35] մամբ : * Եւ ածից զձեզ յանապատ ազգաց. և դատ եղից անդ ընդ ձեզ [36] դէմ յանդիման : * Որ օրինակ եդի դատ ընդ հարսն ձեր յանապատի անդ՝ յորժամ հանի զնոսա յերկրէն եգիպ տացւոց. և այնպէս դատեցայց զձեզ [37] ասէ Տր Տր Ա.Ծ : * Եւ անցուցից ընդ գաւազանաւ իմով. և մուծից զձեզ ընդ թուով [38] ուխտի իմոյ : * Եւ որոշեցից 'ի ձէնջ զամպարիշտս, և զապստամբս. զի 'ի բնակութենէ նց հանից զնս. և յերկիրն Իէլի ոչ մտցեն՝ և ծանիջիք թէ ես եմ [39] Տր Ա.Ծ : * Եւ դուք տունդ Իէլի՝ այսպէս ասէ Տր՝ Տր Ա.Ծ. նախ՝ 'ի բաց ընկեցէք զիւրաքանչիւր զգնացս իւր. և ապա թէ լսիցէք ինձ. և զանուն իմ սուրբ ոչ պղծիցէք պատարագօք ձերովք՝ և [40] գնացիւք ձերովք : * Զի 'ի վերայ լե րին սրբոյ իմոյ. 'ի վր լերինն բարձու Իէլի՝ ասէ Տր Տր՝ անդ ծառայեսցեն ինձ ամ տունդ Իէլի իսպառ. և անդ ըն կալայց. և անդ այց արարից ընծայից ձերոց. և զպտուղս երախայրեաց ձե [41] րոց յամ սրբութիս ձեր : * Ի հոտ ա նուշից ընկալայց հանել զձեզ 'ի ժողո վրդոց. և ընդունիլ զձեզ յաշխարհաց՝ ուր ցրուեալն էիք 'ի նոսա. և սուրբ եղէց 'ի ձեզ յանդիման ժողովրդոց : [42] * Եւ ծանիջիք թէ ես եմ Տր. 'ի տա նիլ զձեզ յերկիրն Իէլի. յերկիրն յոր ամբարձի զձեռն իմ տալ զնա հարցն [43] ձերոց : * Եւ յիշեսջիք անդ զճանա պարհս ձեր. և զգնացս ձեր՝ որովք պղծեցայք 'ի նմա. և կոծեսջիք զերեսս ձեր

ձեր 'ի վ̃ր ա̃մ անիրաւութեանց ձերոց՝ զոր արարիք։ 44 * Եւ ծանիջիք թէ ես եմ Տր̃. առնել ձեզ զայն այնպէս. զի մ̃ի անուն իմ պղծեսցի ըստ ճանապարհաց ձերոց չարաց. և ո̃չ ապականեալ գնացից ձերոց. ասէ ադօնայի Տր̃։

45 * Եւ եղև բան Տ̃ն առ իս՝ և ասէ։ 46 * Որդի մարդոյ՝ հաստատեա զերեսս քո 'ի թեմա̃ն. և հայեա̃ց 'ի գեդօն. և մարգարէա̃ց 'ի վերայ անտառի իշխանին գաբեղայ։ 47 * Եւ ասասցես ցանտառն գաբեղայ. լո̃ւր զպատգամս Տ̃ն. այսպէս ասէ Տր̃ Ա̃դ. ահաւասիկ ես հարից զքեն հուր. և կերիցէ 'ի քեն զա̃մ փայտ դալար. և զա̃մ փայտ չոր. և ո̃չ շիջցի բոցն բորբոքեալ. և այրեսցին 'ի նմա ա̃մ դէմք յարևելից մինչև ցհիւսիս։ 48 * Եւ ծանիցէ ա̃մ մարմին. թէ ես Տր̃ վառեցի զնա՝ և ո̃չ շիջցի։ 49 * Եւ ասեմ. քա̃ւ լիցի Տր̃ Տր̃՝ նոքա ասեն ցիս. ո̃չ ապաքէն առակ է այդ՝ որ ասիդ։

## ԳԼ. ԻԱ.

1 Եւ եղև բան Տ̃ն առ իս՝ և ասէ։ 2 * Վ̃ն այդորիկ մարգարէա̃ց որդի մարդոյ. և հաստատեա զերեսս քո 'ի վերայ եր̃մի. և հայեա̃ց 'ի սրբութիւնս նոցա. և մարգարէասցիս 'ի վերայ երկրին ի̃ղի։ 3 * Եւ ասասցես ցերկիրն ի̃ղի. այսպէս ասէ Տր̃՝ Տր̃ Ա̃դ. ահաւասիկ ես 'ի վերայ քո՝ և մերկացից զվաղակաւորն իմ 'ի պատենից իւրոց. և սատակեցից 'ի միջոյ քումմէ զանիրաւն՝ և զանօրէնն։ 4 * Փոխանակ զի սատակեցից 'ի քէն զանիրաւն և զանօրէնն. վ̃ն այսորիկ ելցէ վաղակաւորն իմ 'ի պատենից իւրոց 'ի վ̃ր ա̃մ մարմնոյ. յարևելից մինչև ցհիւսիս։ 5 * Եւ ծանիցէ ա̃մ մարմին, թէ ես եմ Տր̃. մերկացի զվաղակաւորն 'ի պատենից իւրոց. և անդրէն ո̃չ ևս դարձցի։ 6 * Եւ դու որդի մարդոյ՝ հեծեծեսջիր բեկեալ միջով քով. և հեծեծեսջիր ցաւովք յանդիման ն̃ց։ 7 * Եւ եղիցի, թէ ասասցեն ցքեզ. վասն է̃ր հեծես. և ասասցես՝ զի բօթ լո̃ւայ՝ և գալոց է. և բեկցին ա̃մ սիրտք՝ և ա̃մ ձեռք լքցին. և ցամաքեսցի ա̃մ մարմին. և ամենայն շունչ. և ա̃մ երանք ապականեսցին գիջութ̃բ. ահաւասիկ գայ՝ և եղիցի՝ ասէ Տր̃ Տր̃ Ա̃դ։ 8 * Եւ եղև բան Տ̃ն առ իս՝ և ասէ։ 9 * Որդի մարդոյ մարգարէա̃ց՝ և ասասցես. այսպէս ասէ ադօնայի Տր̃. ասասցես, սո̃ւր՝ սո̃ւր՝ սրեա̃ց՝ և զայրացի՛ր։ 10 * Զի սպանցես սպանումն՝ սրեաց, ջի̃նջ լեր. պատրաստեա̃ց 'ի հաշումն. կոտորեա՝ արհամարհեա որ դեակ իմ. յապաւեա զամենայն ծառ։

11 * Եւ ետ պատրաստ ունել զնա 'ի ձեռին իւրում. սրեցաւ, պատրաստ է սուրն տալ 'ի ձեռս կոտորչի։ 12 * Զա̃յն առ. ճի̃չ բարձ որդի մարդոյ. զի եկն՝ էհաս այն 'ի վ̃ր ժողովրդեան իմոյ. և 'ի վերայ իշխանայն ի̃ղի. պանդուխտք եղիցին. քանզի էհաս սուրն 'ի վ̃ր ժողովրդեան իմոյ. վասն այնորիկ ծափս հար ձեռամբ քով։ 13 * Զի արդարացաւ. և զի̃նչ է՝ ապրեցի՞ ազգն. ո̃չ եղիցի՝ ասէ Տր̃ Տր̃։ 14 * Եւ դու որդի մարդոյ մարգարէա̃ց. ծափս հար ձեռամբ. կրկնեա զսուրն. զի երկրորդ սուրն վիրաւորաց է. սուր վիրաւորացն սատակեալ է. և զարհուրեցուսցես զն̃ս։ 15 * Զի բեկցին սիրտք իւրեանց. բազմասցին տկարացեալք յա̃մ դրունս ն̃ց. զի մատնեցան 'ի սպանումն. որոց գեղեցկացաւ 'ի փայլիւն. պիտանի եղև 'ի սպանումն։ 16 * Շրջեա̃ց, յածեա̃ց, սրեա̃ց յաջմէ և յահեկէ. զի ուր քո երեսք զարթիցեն։ 17 * Եւ ես անդ ծափս հարից, և կայթեցից. և արձակեցից զբարկութ̃ի իմ. ես Տր̃ խօսեցայ։

18 * Եւ եղև բան Տ̃ն առ իս՝ և ասէ։ 19 * Որդի մարդոյ. պատրաստեա դու քեզ երկուս ճանապարհս. մտանել սրոյ արքային բաբելացւոյ. զի 'ի միոջէ աշխարհէ ելցեն երկու առաջք. և ձեռն պատրաստեալ 'ի գլուխ ճանապարհի քաղաքին։ 20 * Ի սկզբան ճանապարհին կարգեսցես. և դու պատրաստեա. և յորդորեա ճանապարհ. մտանել սրոյն ընդ ռաբաթ որդւոցն ամօնայ 'ի վ̃ր հրէաստանի. և 'ի վ̃ր եր̃մի 'ի մէջ ն̃ր։ 21 * Զի եկեսցէ՝ կացցէ արքայն բաբելացւոց 'ի վ̃ր հին ճանապարհին. 'ի գլուխ երկուց ճանապարհաց. հմայս հմայել՝ գաւազանս զննելոյ. հարցումն հարցանել 'ի դրօշելոց. լերդահմա̃յ լինել։ 22 * Ընդ աջմէ իւրմէ ելին նմա հմայք. 'ի վերայ եր̃մի արկանել պատնէշ. բերանալիր գոչել՝ բարձրացուցանել զձայն աղաղակի. արկանել խից 'ի վերայ դրանցն նորա. և արկանել հող՝ և շինել նետակալս։ 23 * Եւ նա նոցա այնպէս թուեցի՞ որպէս հմայիցէ ոք հմայս առաջի ն̃ց. և եօթն երորդիցէ նոցա եօթներորդս. և ինքն յուշ արասցէ զանիրաւութիւս նոցա յիշել։ 24 * Վ̃ն այսորիկ այսպէս ասէ Տր̃ Տէր Ա̃դ. փոխանակ զի յուշ արարիք զանիրաւութ̃իս ձեր. 'ի յայտնիլ ամպարշտութեանց ձերոց. յերևիլ մեղաց ձերոց՝ յա̃մ ամպարշտութ̃իս ձեր՝ և 'ի գնացս ձեր. փոխանակ զի դուք յիշեցուցէք՝ 'ի նոսին սատակեսջիք։ 25 * Եւ դու պիղծ՝ և անօրէն իշխանդ ի̃ղի.

որոյ

որոյ եկեալ է օր վախճանի 'ի ժամանակի անիրաւութեան: 26 *Այսպ ասէ Տր Տր՝ 'ի բաց առ 'ի քէն զխոյրդ. և զհան զպսակդ. զի ոչ այդպէս վճարեսցի՝ խոնարհեցուցեր զբարձրացեալն. և բարձրացուցեր զխոնարհն: 27 *Արդ՝ անիրաւութիւն յանիրաւութեան վերայ եդից զնա. և այդ ոչ այդպէս եղիցի. մինչև եկեսցէ՝ որում անկ է. և տաց 'ի ձեռս նորա: 28 *Եւ դու որդի մարդոյ մարգարէա՛ց, և ասասցես. այսպ ասէ Տր Տր Ած ցորդիսն Ամոնայ. և վասն նախատանաց նոցա. և ասասցես սուր՝ սուր հանեալ 'ի սպանումն, մերկացեալ 'ի վախճան: 29 *Զարթի՛ր՝ զի փայլեսցիս տեսլեամբ նանրութեան, և 'ի հմայել հմայս ստութեան. մատնել զնա քեզ 'ի պարանոցս վիրաւորացն անօրինաց. որոց եկեալ հասեալ է օր վախճանի. 'ի ժամանակի անիրաւութեան: 30 *Դարձ անդրէն՝ մի՛ աստէն լուծանիր. 'ի տեղւոջ յորում ծնեալդ ես՝ այդրէն յերկրին քում դատեցայց զքեզ: 31 *Եւ հեղից 'ի վր քո զբարկութիւն իմ. հրով բարկութեան իմոյ փչեցից 'ի քեզ. և մատնեցից զքեզ 'ի ձեռս արանց բարբարոսաց՝ որք գործեն զապականութիւն: 32 *Եւ եղիցես կերակուր հրոյ. և արիւն քո եղիցի 'ի մէջ երկրի քո՛յ՝ և յիշատակ քո մի՛ գտցի. զի ես Տր խօսեցայ:

## ԳԼ. ԻԲ.

Աղտ որդւոցն Իսրայէլի:

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ: 2 *Եւ դու որդի մարդոյ. եթէ դատեսցես, դատեսջի՛ր զքաղաքս արեանց: 3 *Եւ խայտառակեսցես զամ զանօրէնութիւնս նր՝ և ասասցես. այսպ ասէ Տր Տր Ած. ո՛ քաղաք՝ որ հեղուս զարիւն 'ի միջի իւրում. 'ի հասանել ժամանակի իւրոյ. և խորհի զխորհուրդս զանձնէ՝ պղծել զանձն իւր: 4 *Յարիւննդ՝ զոր հեղեր՝ թաթաւեցար. և 'ի խորհուրդսն՝ զոր խորհեցար՝ պղծեցար. և մերձեցուցեր զաւուրս քո. և ածեր ժամանակ ամաց քոց. վս այնորիկ ետու զքեզ 'ի նախատինս ազգաց. և յայպն ամ աշխարհաց: 5 *Որք մօտ 'ի քեզ էին. և հեռի 'ի քէն. այպանեսցեն զքեզ՝ և ասասցեն. թէ անուանիդ 'ի պղծութիւն մատնեցար. քանզի յաճախեցար յանօրէնութիւնս: 6 *Ահաւասիկ առաջնորդք տանդ Իէլի, իւրաքանչիւր ընդ մերձաւորս ազգի իւրեանց խառնակէին 'ի քեզ՝ զի հեղցեն զարիւն: 7 *Զհայր՝ և զմայր անարգէին 'ի քեզ. և ընդ եկին՝ և ընդ պանդխտին անիրաւութբ գնային 'ի քեզ. զորբն և զայրին բռնադատէին 'ի քեզ: 8 *Զսրբութիւս իմ արհամարհէին. և 9 զշաբաթս իմ պղծէին 'ի քեզ: *Արք աւազակք էին 'ի միջի քում. զի հեղուցուն 'ի քեզ զարիւն. և 'ի վր լերանց ուտէին 'ի քեզ. և գործս անսուրբս 10 գործէին 'ի միջի քում: *Զամօթ հօր յայտնէին 'ի քեզ. և պղծութբ զդաշ11 տանն լլկէին 'ի քեզ: *Եւ իւրաքանչիւր զկին ընկերի իւրոյ պղծէին. ‖ և իւրաքանչիւր զնու իւր պղծէին ամպարշտութբ. և իւրաքանչիւր զքոյր զդուստր հօր իւրոյ լլկէին 'ի քեզ: 12 *Կաշառս առնուին 'ի միջի քում. և ածիս կատարեցիր զվախճան չարեաց քոց ըստ բռնութեան քում. քանզի մո13 ռացար զիս՝ ասէ Տր Տր: *Ահաւասիկ հարից ծափ զծափի 'ի վերայ գործոցն քոյ՝ զոր արարեր. և 'ի վր արեանցն 14 գործելոց 'ի միջի քում: *Եթէ ժուժ կալեսցէ սիրտ քո. եթէ զօրասցին ձեռք քո. յաւուրսն յորս ես արարից ընդ քեզ. ես Տր խօսեցայ՝ և արարից: 15 *Եւ ցրուեցից զքեզ ընդ ազգս՝ և ցանեցից զքեզ ընդ գաւառս. և պակա16 սեսցի պղծութիւն քո 'ի քէն: *Եւ ժառանգեսցից զքեզ յանդիման ազգացն. 17 և ծանիջիք՝ թէ ես եմ Տր: *Եւ եղև 18 բան Տն առ իս՝ և ասէ: *Որդի մարդոյ. ահաւասիկ եղեն ինձ տունդ Իէլի խառնակեալ՝ որպէս խառնակեալ իցէ պղինձ, և երկաթ, և անագ, և կա19 պար, և արծաթ 'ի հալոցի: *Վասն այնորիկ ասա, այսպ ասէ Տր Տր. փոխանակ զի եղերուք ամենեքեան 'ի մի խառնակութիւն. վասն այնորիկ ես ըն20 կալայց զձեզ 'ի մէջ Եէմի: *Որպ ընդունիցի ոք զարծաթ, և զպղինձ, զերկաթ, և զկապար 'ի մէջ հալոցի, փչել 'ի նա զհուր. և ձուլել. նոյնպէս ընկա21 լայց զձեզ բարկութբ իմով: *Եւ առաքեցից, և ձուլեցից զձեզ. և փչեցից 'ի ձեզ հրով բարկութեան իմոյ. և 22 ձուլիջիք 'ի մէջ նորա: *Զոր օրինակ ձուլի արծաթ 'ի մէջ բովուց. այնպէս ձուլիջիք 'ի միջի դորա. և ծանիջիք, թէ ես եմ Տր. հեղի զսրտմտութիւն 23 իմ 'ի վերայ ձեր: *Եւ եղև բան Տն 24 առ իս՝ և ասէ: *Որդի մարդոյ. ասա՛ ցդա՝ դու այն երկիր ես՝ որ ոչ թանաս՝ և ոչ եկն անձրև 'ի վերայ քո յաւուր 25 բարկութեան: *Որոյ իշխանք իւր 'ի միջի իւրում իբրև զառիւծունս գոչեն: յափշտակել յափշտակութիւս. ուտեն զանձինս տնանկաց բռնութբ. և առնուն պատիւս անիրաւութբ. և բազ26 մացան այրիք 'ի միջի քում: *Եւ քահա_

‖ Ղևտ. 5. 8.

հանայքն՝ որք անարգէին զօրէնս՝ և պղծէին զսրբութիւնս իմ. և զսուրբն՝ ՚ի պղծոյն ոչ ընտրէին. և զարատաւորն յանարատէ անտի ոչ զատուցանէին. և ՚ի շաբաթուց իմոց ծածկէին զաչս իւրեանց. և զշաբաթս իմ՝ պղծէին ՚ի միջի նոցա: 27 * Իշխանք նորա ՚ի միջի նորա իբրև գայլք յափշտակօղք. յափշտակել զյափշտակութիւն՝ հեղուլ զարիւն՝ կորուսանել զանձինս. զի ագահութիւն յոյժ ստասցին: 28 * Եւ մարգարէք նր՝ որք ծեփէին զնոսա, անկցին. որք տեսանէին զսուտ. ըղձանային ՚ի սնոտիս նոցա. և ասէին՝ այսպէս ասէ ադօնայի Տր. և Տն չէր խօսեցեալ: 29 * Ժողովուրդ երկրին տառապեցուցանէին անիրաւութբ. և յափշտակէին յափշտակութիւս. զաղքատն՝ և զտնանկն բռնադատէին. ընդ տնանկին՝ և ը պանդխտին իրաւամբք ոչ գնային: 30 * Եւ խնդրեցի ՚ի նոցանէ զայր մի՝ որ ուղիղ գնայցէ. և կացցէ առաջի իմ մտադիւր ՚ի ժամանակի բարկութե՝ զի մի ջնջեցից զնոսա. և ոչ գտի: 31 * Եւ հեղի ՚ի վր նց զսրտմտութի իմ հրով բարկութե իմոյ՝ կատարել ՚ի նս: բստ ճանապարհաց նոցա՝ ետու նոցա ՚ի գլուխս նոցա՝ ասէ Տր Տր:

Սոփ. 3.11. Միքիա. 3. 3.

## ԳԼ: ԻԳ:

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ. 2 * Որդի մարդոյ. կանայք երկու, էին դստերք միոյ մօր: 3 * Եւ պոռնկեցան յեգիպտոս ՚ի մանկութե իւրեանց՝ անդ անկան ստինք իւրեանց. և անդ անկան ՚ի կուսութէ: 4 * Անուն դստերն երիցու ոողլայ. և քեռ նր ոողիբայ՝ և եղեն ինձ՝ և ծնան ուստերս և դստերս՝ և անուանք նց. անուն շամրինի ոողլայ. և եէմի ոողիբայ: 5 * Եւ պոռնկեցաւ ոողլայն յինէն. և արձակեաց զաչս իւր զհետ հոմանեաց իւրոց յասորեստանեայսն՝ որք մերձ էին առ նա: 6 * Զգեցեալ հիրս և կարմիրս. յիշխանս՝ և ՚ի զօրագլուխս. յերիտասարդս յընտրեալս՝ զամենեսին ՚ի սպառազէնս ՚ի հեծեալս յերիվարս: 7 * Եւ տարածեաց զպոռնկութի առ ամ ընտրեալս յորդիսն ասորեստանեայց. և առ ամենեսեան՝ զորոց չոգաւ զկնի ամ խորհրդովք իւրովք՝ և պղծեցաւ: 8 * Զպոռնկութի իւր յերկրէն եգիպտացւոց ոչ եթող. զի ընդ նոսա պղծիւր ՚ի մանկութէ իւրմէ. և նոքա արկին զնա ՚ի կուսութէ՝ և հեղին ՚ի վր նր զպոռնկութի իւրեանց: 9 * Վս այնորիկ մատնեցի զնա հոմանեաց իւրոց. ՚ի ձեռս որդւոցն ասորեստանեայց՝ զորոց զհետ

10 երթայր: * Նոքա յայտնեցին զխայտառակութիւն նորա. զուստերս և զդստերս նր առին. և զնա սրով սպանին. և եղեն խօսք կանանց. և խնդրեցին զվրէժ ՚ի նմանէ ՚ի դստերս իւր:

Եզ. 16. 37.

11 * Եւ ետես քոյր նորա ոողիբայ. և առաւել զանցոյց զաչարձակութի ապականութե իւրոյ քան զնորայն. և զպոռնկութի իւր քան զպոռնկութի քեռն իւրոյ: 12 * Զի չոգաւ զհետ որդւոցն ասորեստանեայց. իշխանաց՝ և զօրավարաց՝ որք մերձ էին առ նա. զգեցելոց հանդերձս ծիրանիս ազնուականս. սպառազինաց հեծելոց յերիվարս. երիտասարդաց ընտրելոց ամենեցունց: 13 * Եւ տեսի՝ զի պղծեցան. և մի ճանապարհ էր երկոցունց: 14 * Եւ յաւել ՚ի պոռնկութիս իւր. և ետես արս նկարեալս յորմն. պատկերս քաղդէացւոց՝ 15 նկարեալ գրչաւ ՚ի նկարու: * Ածեալ պէսպէս կամարս ընդ մէջ իւրեանց. և խոյրս ներկեալս ՚ի գլուխս իւրեանց. և երիվն երիվն հարկանէր յամենեցունց ՚ի նմանութի որդւոցն բաբիլացւոց՝ յերկրին քաղդէացւոց՝ յաշխարհին 16 իւրեանց: * Եւ ակն եդ նց հայեցուածօք աչաց իւրեանց. և առաքեաց հրեշտակս առ նոսա յերկիրն քաղդէացւոց: 17 * Եւ եկին առ նա որդիքն բաբիլացւոց յանկողինս օթի՝ և պղծեցին զնա ՚ի պոռնկութե իւրում. և պղծեցաւ ը նս՝ և յափրացաւ անձն նր ՚ի նոցանէ: 18 * Եւ յայտնեաց զպոռնկութի իւր. և առակեաց զամօթ իւր. և մեկնեցաւ անձն իմ ՚ի նմանէ. որպէս և մեկնե_ 19 ցաւ ՚ի քեռէ նորա: * Եւ յաճախեցեր զպոռնկութի քո՝ յիշեցուցանել զաւուրս մանկութե քոյ. յորս պոռնկէիրն 20 յեգիպտոս: * Եւ արձակեցեր զաչս քո առ քաղդէացիսն՝ յիշանդամն՝ և ՚ի 21 ձիանդամն: * Եւ այց արարեր անօրէնութե մանկութե քոյ՝ զոր գործէիրն յերկրին եգիպտացւոց յօթեվանս քո. ուր անկան ստինք քո. և 22 լուծաւ կուսութի քո: * Վս այդորիկ ոողիբա՝ այսպէս ասէ Տր Տր. ահաւադիկ ես յարուցից ՚ի վերայ քո զհոմանիսն՝ յորոց յափրացաւ անձն քո. և 23 ածից, պատեցից զնոսա զքև: * Եւ զորդիսն բաբիլացւոց. և զամ քաղդէացիս զփակուդ՝ և զսուէ. և զկուէ. և զամ որդիսն ասորեստանեայց ընդ նոսա. զերիտասարդս ընտիրս. զիշխանս զզօրավարս՝ զսպառազէնս զանուանիս՝ զհեծեալս յերիվարս: 24 * Ամենեքեան եկեսցեն ՚ի վր քո ՚ի հիւսիսոյ կառք և անիւք ազգաց բազմութեան. սաղաւարտաւորք և վահանաւորք՝ և

արկցեն շուրջ զքեւ պահ. եւ տաց առա
ջի երեսաց նց̅ դատաստանս՝ եւ խնդ-
րեսցեն 'ի քէն վրէժս դատաստանօք
իւրեանց։* Եւ տաց զնախանձ իմ 'ի 25
քեզ. եւ արասցեն ընդ քեզ ըստ բար-
կութեան սրտմտութեան իմոյ՝ եւ զունչս եւ
զականջս քո կտրեսցեն. եւ զմնացորդս
քո հրով սատակեսցեն։* Եւ մերկաս 26
ցեն 'ի քէն զհանդերձս քո. եւ առցեն
զզարդ պարծանաց քոց։* Եւ դարձու 27
ցից զամբարշտութիւս քո 'ի քէն. եւ
զպոռնկութիւս քո յերկրէն եգիպտաց
ւոց. եւ ոչ ամբառնայցես զաչս 'ի նա.
եւ ոչ եւս յիշեսցես զեգիպտոս։* Վ̅ 28
այդորիկ այսպէս ասէ Տր̅ Տր̅՝ ահաւա
դիկ ես մատնեցից զքեզ 'ի ձեռս ատե
լեաց քոց. յորոց յափրացաւ անձն քո
'ի նոցանէն։* Եւ գնասցեն ընդ քեզ 29
ատելութեամբ. եւ առցեն զամ̅ վաստակս
քո՝ եւ զերկս քո. եւ եղիցիս մերկ՝ եւ
խայտառակեալ. եւ յայտնեսցի ամօթ
պոռնկութեան քոյ՝ ամբարշտութիւն քո
եւ պոռնկութիւն։* Արարին քեզ զայդ 30
'ի պոռնկելն քում զհետ ազգաց՝ ուր
պղծեիր 'ի խորհուրդս նց̅։* Զճանա 31
պարհ քեռ քո գնացեր. եւ տաց զբա-
ժակ նորա 'ի ձեռս քո։* Այսպէս ասէ 32
Տր̅ Տր̅՝ զբաժակն քեռ քո արբցես՝
զխորն՝ եւ զլայն. եւ եղիցիս 'ի ծաղր՝ եւ
'ի կատականս յաճախել եւ կատարել
զարբեցութի։* Եւ լցցիս լքմամբ. 33
զբաժակն ապականութեան. զբաժակն
սամարէոյ քեռ քո շամրնի։* Արբցես՝ եւ քամես 34
ցես՝ եւ զհերս քո խզեսցես. եւ զստինս
քո կոծեսցես. եւ զտօնս քո. եւ զամսա-
գլուխս դարձուցից 'ի քէն. զի ես խօ-
սեցայ՝ ասէ ադօնայի Տր̅։* Վ̅ այդո 35
րիկ այսպ̅ ասէ ադօնայի Տր̅. փոխանակ
զի մոռացար զիս՝ եւ ընկեցեր զիս զկնի
մարմնոյ քոյ. եւ դու ընկալար զամբարշ
տութիւնդ քո. եւ զպոռնկութիւս քո։
*Եւ ասէ ցիս Տր̅՝ որդի մարդոյ. եթէ 36
դատիցես զոողայն եւ զոողիբայն. եւ
պատմեսցես նց̅ զանօրէնութիւս իւրեանց։
*Զի շնացան՝ եւ արիւնք 'ի ձեռս նց̅. 37
խորհուրդք նոցա շնային՝ եւ զորդիսն
իւրեանց՝ զորս ինձ ծնան՝ ածէին զբո-
ցով.* Մինչ այնչափ արարին եւ ինձ. 38
զի զսրբութիւնս իմ պղծէին 'ի նմին
աւուր. եւ զշաբաթս իմ ապականէին։
*Ի զոհել նց̅ զորդիսն իւրեանց կռոցն 39
իւրեանց՝ եւ մտանէին 'ի նմին աւուր 'ի
սրբութիւնս իմ. եւ պղծէին զնոսա. եւ
այսպէս առնէին 'ի մէջ տան իմոյ։
*Զի եւ արանց եկելոց 'ի հեռաստա- 40
նէ, առ որ հրեշտակս արձակէին. իսկ
իբրեւ գային, 'ի բաղանիս մտանէիր. 'ի
ծարիր եւ 'ի սնգոյր շպարէիր. եւ զար

41 դարեիր զարդու։ *Եւ նստէիր 'ի գա
հոյս զարդարեալս. եւ սեղան յօրինեալ
դնէիր առաջի քո. եւ զխունկս իմ. եւ
զիւղս առնուիր՝ եւ ուրախ լինէիր ընդ
42 նոսա։ *Եւ ձայնս արուեստականաց
նուագէին. եւ առ այն արամբ, այլեւ
բազմութի արանց գինեմոլաց եկելոց յա
նապատէ՝ տային ապարանջանս 'ի ձեռս
նոցա. եւ պսակ պարծանաց 'ի գլուխս
43 նոցա։ *Եւ ասացի՝ թէ մի շնասցի
ընդ նոսա զգործ պոռնկութեան. եւ նա
44 պոռնկիւր։ *Եւ մտանէին առ նա՝
ոպ̅ մտանիցեն առ կին պոռնիկ. նոյնպ̅
մտանէին առ ոողայ՝ եւ առ ոողիբայն՝
45 գործել զանօրէնութի։ *Եւ արք ար
դարք էին նոքա. եւ խնդրեսցեն վրէժս
'ի նոցանէ։ վրէժ շնացելոյ՝ եւ զվրէժ
արեան. զի շնացողք էին. եւ արիւն 'ի
46 ձեռս նց̅։ *Զի այսպէս ասէ Տր̅ Տր̅.
ած 'ի վերայ նոցա զօր. եւ արկ զնոքօք
զխռովութի՝ եւ զյափշտակութի։
47 *Եւ քարաձիգ լեր 'ի նոսա քարամբք
զօրաց. եւ խոցոտեա զնոսա սրովք նց̅.
ուստերք նոցա՝ եւ դստերք կոտորես-
ցին։ եւ զտունս նոցա հրձիգ արասցեն։
48 *Եւ դարձուցից զամպարշտութիւս
յերկրէ. եւ խրատեսցին ամենայն կա
նայք. եւ մի եւս արասցեն ըստ ամպարշ
49 տութեան նց̅։* Եւ տացի ամպարշտու-
թի ձեր 'ի վերայ ձեր. եւ ըստ մեղաց
խորհրդոց ձերոց սգասջիք. եւ ծանի-
ջիք, թէ ես եմ Տր̅ Տր̅։

## Գլ։ ԻԴ։

1 Եւ եղեւ բան Տն̅ առ իս՝ յամին իններորդի յամսեանն տասներորդի
2 որ օր տասն էր ամսոյն։ *Եւ ասէ՝
որդի մարդոյ՝ գրեա դու քեզ զնշա-
նաւորն. յօրէ յորմէ հետէ էհաս ար-
քայն բաբիլացւոց 'ի վերայ Եճմի։
3 *Յօրէ յայնմանէ առակեսցես տանն
դառնացողի զառակս զայս, եւ ասաս-
ցես. այսպ̅ ասէ Տր̅ Տր̅. կառ՛ զկաթ-
սայդ. կառ՛, եւ արկցես 'ի դա ջուր։
4 *Եւ դիցես 'ի դմա զանդամաթիւդ
զամ̅ յօշուած գեղեցիկ՝ զազդր՝ եւ զե-
5 րի քանցեալ յոսկերաց։ *Առեալ յըն
տիր ընտիր յանասնոց. եւ զոսկերսն 'ի
ներքոյ կաթսային այրեսջիք. եռաց՝
զեղաւ՝ քաջ եռաց. եփեցան ոսկերքն
6 'ի միջի նորա։ *Վ̅ այնորիկ այսպէս
ասէ ադօնայի Տր̅. ով քաղաք արեանց.
կաթսայ լի ժանգով. եւ ժանգն 'ի նմա-
նէ ոչ պարզեցաւ. անդամ անդամ է-
հան 'ի նմանէ. եւ վիճակ ոչ անկաւ 'ի
7 վերայ նորա։ *Զի արիւն նր̅ 'ի մէջ
նորա է. 'ի սալաքարի 'ի վերայ եդի զնա.
եւ ոչ հեղի զնա յերկիր՝ ծածկել հողով։

*Մինչեւ

8 * Մինչեւ ելցէ սրտմտութիւն իմ ՚ի վրէժխնդրութիւն. պահանջել զվրէժս. եւ ետու արիւն նր ՚ի վր սալաքարին, զի մի՛ ծածկեսցի: 9 * Վասն այդորիկ այսպէս ասէ ադօնայի Տր՝ վա՜յ քաղաք արեանց: եւ ես զփայտն յաճախեցից: 10 * Օխանձողն բազմացուցից. հուր բորբոքեցից. զի մսոն հալեսցի. եւ արգանակն նուաղեսցի. եւ ոսկերքն փշրեսցին: 11 * Եւ կացցէ ՚ի վր կայծականց իւրոց. բորբոքեցաւ, զի վառեսցի. ջեռցի, եւ պղինձ նր հալեսցի. եւ ՚ի միջի նորա պղծութիւն նր. եւ պակասեսցի ժանգ նորա: 12 * Նուաղեսցի ժանգ նր՝ եւ մի՛ ելցէ ՚ի միջոյ նր բազում ժանգ նորա. եւ յամօթ լիցի ժանգ նր պղծութեն արգանակին: 13 * Փոխանակ զի պղծէիր դու. եւ ո՛չ սրբեսցիս ՚ի պղծութենէ քումմէ. եւ զի՞նչ իցէ՝ եթէ ոչ սրբիցի տակաւին. մինչեւ կատարեցից զսրտմտութիւն իմ ՚ի նմա: 14 * Ես Տր խօսեցայ՝ եւ եկեսցէ, եւ արարից, եւ ո՛չ խորշեցայց, եւ ո՛չ ողորմեցայց: եւ ո՛չ մխիթարեցայց. այլ ըստ ճանապարհաց քոց՝ եւ ըստ գնացից քոց դատեցից զքեզ՝ ասէ ադօնայի Տր: (Վասն այդորիկ ես դատեցից զքեզ ըստ արեանց քոց. եւ ըստ խորհրդոց քոց դատեցից զքեզ. պիղծ եւ անուանարկ. որ յաճախեցեր ՚ի դառնութիւն:) 15 * Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ: 16 * Որդի մարդոյ. ահաւասիկ ես բառնամ ՚ի քէն զցանկալիս աչաց քոց պատերազմաւ. եւ ո՛չ կոծեսցիս. եւ ո՛չ լայցես. եւ ո՛չ ելցէ արտօսր ՚ի քէն: 17 * Զի հեծութիւն արեան միջոյ՝ եւ սգոյ է. եւ ո՛չ հիւսցին գէսք քո. կօշիկք քո այդրէն յոտս քո. եւ մի՛ մխիթարեսցիս ՚ի շրթանց նց՝ եւ զհաց արանց մի՛ կերիցես: 18 * Եւ խօսեցայ ընդ ժողովրդեանն ընդ առաւօտս. որպէս հրամայեաց ինձ Տր: եւ մեռաւ կինն իմ յերեկորեայ. եւ արարի ընդ առաւօտն՝ որպէս հրամայեցաւ ինձ: 19 * Եւ ասէ ցիս ժողովուրդն. ո՞չ պատմես մեզ՝ զինչ է այդ՝ զոր գործեսդ: 20 * Եւ ասեմ ցնոսա՝ բան Տն եղեւ առ իս՝ եւ ասէ. 21 * Ասա՛ ցտունն Իլի. այսպէս ասէ Տէր Տր. ահաւասիկ ես պղծեցի զսրբութիւն իմ. զհպարտութիւն զօրութեան ձերոյ: զցանկալիս աչաց ձերոց՝ եւ յորս խնայէին անձինք ձեր. ուստերք ձեր՝ եւ դստերք ձեր. որք ՚ի ձէնջ մնացեալ էին, ՚ի սուր անկցին: 22 * Եւ արասջիք սոյնպէս՝ որպէս ես արարի. ՚ի բերանոց նց մի՛ մխիթարեսջիք. եւ զհաց արանց ո՛չ ուտիցէք: 23 * Եւ վարսք ձեր ՚ի վր գլխոց ձերոց. եւ կօշիկք ձեր յոտս ձեր. ո՛չ կոծիցէք. եւ ո՛չ լայցէք. եւ հաշեսջիք յանիրաւու-

թիս ձեր: եւ ո՛չ մխիթարեսջիք իւրաքանչիւրոք զեղբայր իւր: 24 * Եւ եղիցի ձեզ եզեկիէլ ՚ի նշան. ըստ ամի զոր արար, առնիցէք. յորժամ հասանիցէ այդ. եւ ծանիջիք, թէ ես եմ ադօնայի Տր: 25 * Եւ դու որդի մարդոյ՝ ո՞չ ապաքէն յաւուր յայնմիկ յորժամ բարձից ՚ի նոցանէ զզօրութիւն նց. եւ զհպարտութիւն պարծանաց նոցա. եւ զցանկալիս աչաց նց. եւ զհպարտութիւն անձանց նոցա: զուստերս՝ եւ զդստերս նոցա: 26 * Յաւուր յայնմիկ գայցէ ապրեալն առ քեզ՝ տալ գոյժ յականջս քո: 27 * Յաւուր յայնմիկ բացցի բերան քո առ ապրեալն. խօսեսցիս, եւ մի՛ եւս համրասցիս. եւ եղիցիս նոցա ՚ի նշան. եւ ծանիցեն՝ թէ ես եմ Տր:

## ԳԼ: ԻԵ:

Ի վերայ որդւոցն ամոնայ:

1 Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ: 2 * Որդի մարդոյ՝ հաստատեա՛ զերեսս քո ՚ի վր որդւոցն ամոնայ. մարգարէա՛ց ՚ի վր նոցա: 3 * Եւ ասասցես ցորդիսն ամոնայ. լուարո՛ւք զպատգամ ադօնայի Տն: այսպէս ասէ ադօնայի Տր. փոխանակ զի ուրախ եղէք ՚ի վր սրբութեանց իմոց՝ որք պղծեցան. եւ ՚ի վր երկրին իլի՝ որ ապականեցաւ. եւ ՚ի վերայ տանն յուդայ՝ որ գնաց ՚ի գերութիւն: 4 * Վն այնորիկ ահաւադիկ ես մատնեմ զձեզ որդւոցն կեդամայ ՚ի ժառանգութիւն: եւ բնակեսցին մեղաւորք իւրեանց ՚ի քեզ. եւ կանգնեսցեն զխորանս իւրեանց ՚ի քեզ: նոքա կերիցեն զպտուղ քո. նոքա արբցեն զպարարտութիւն քո: 5 * Եւ տաց զքաղաքն ամոնացւոց յարօտս ուղտուց. եւ զորդիսն ամոնայ յարօտս հօտից. եւ ծանիջիք, թէ ես եմ Տր: 6 * Զի այսպէս ասէ Տր Տր. փոխանակ զի կայթեցեր դու ձեռամբ քով. եւ դոփեցեր ոտամբ քով. եւ ուրախ եղեր անձամբ քով ՚ի վր երկրին իլի: 7 * Վն այնորիկ ահաւասիկ ես ձգեցից զձեռն իմ ՚ի վերայ քո. եւ տաց զքեզ ՚ի յափշտակութիւն ազգաց. եւ սատակեցից զքեզ ՚ի ժողովրդոց. եւ կորուսից զքեզ ՚ի գաւառաց կորստեամբ. եւ ծանիցես, թէ ես եմ Տր: Ի վերայ մովաբայ: 8 * Այսպէս ասէ ադօնայի Տր. փոխանակ զի ասացին մովաբ՝ եւ սէիր: Ահա որպէս ամ ազգք են. նոյնպէս եւ տունն իլի եւ յուդայ: 9 * Վն այդորիկ ահաւասիկ ես քակեցից զթիկունս մովաբայ ՚ի բարձրաւանդակաց պարսպաց քաղաքացն իւրոց. զընտիր ընտիր երկրին՝

զտունն բեթայ և զասխուլթայ. 'ի վերոյ քան զաղբիւր քաղաքին առ ծովեզերբն: 10 * Որդւոցն կեդեմայ 'ի վերայ որդւոցն Ամոնայ՝ ետու նմա 'ի ժառանգութիւն. զի մի՛ եղիցի յիշատակ որդւոցն Ամոնայ 'ի մէջ ազգաց: 11 * Եւ 'ի մովաբայ վրէժխնդրեցից. և ծանիցեն, թէ ես եմ Տր:

'Ի վերայ եդոմայ:

12 * Այսպէս ասէ ադոնայի Տր. փոխանակ զի խնդրեաց վրէժ եդոմ 'ի տանէն յուդայ: և ոխակալք եղեն՝ և պահանջեցին վրէժս: 13 * Վս այնորիկ այսպէս ասէ ադոնայի Տր. ձգեցից զձեռն իմ 'ի վերայ եդոմայ. և սատակեցից 'ի նմանէ զմարդ և զանասուն. և եդից զնա յանապատ. և հալածեալք 'ի թեմանայ անկցին 'ի սուր: 14 * Եւ խնդրեցից զվրէժ յեդոմայ 'ի ձեռն ժողովրդեան իմոյ իէլի. և արասցեն ընդ եդոմայ ըստ բարկութե սրտմտութեան իմոյ. և ծանիցեն զվրէժխնդրութի ասէ ադոնայի Տր:

'Ի վերայ փղշտացւոց:

15 * Վս այդորիկ այսպէս ասէ ադոնայի Տր. փոխանակ զի ոխակալք եղեն այլազգիքն. և յարուցին վրէժխնդրութի սրտի մտօք. ոտնհարութբ սատակել մինչև յաւիտեան: 16 * Վս այնորիկ այսպէս ասէ ադոնայի Տր. ահաւասիկ ես ձգեցից զձեռն իմ 'ի վր այլազգեացդ՝ և սատակեցից զկրետացիս. և կորուսից զմնացորդս ծովեզերայդ: 17 * Եւ խնդրեցից 'ի նոցանէ զվրէժս մեծամեծս կշտամբութբ՝ և բարկութբ. և ծանիցեն, թէ ես եմ ադոնայի Տէր. 'ի պահանջել զվրէժխնդրութիս իմ 'ի նոցանէ:

## ԳԼ. ԻԶ.

'Ի վերայ Ծուրայ:

1 Եւ եղև յամին մետասաներորդի. որ օր մի էր ամսոյն. եղև բան Տն առ իս՝ և ասէ: 2 * Որդի մարդոյ՝ փոխանակ զի ոտնհար եղև ծուր 'ի վերայ եէմի. և ասէ՝ վա՛շ վա՛շ՝ զի բեկաւ՝ կորեաւ. առ իս դարձցին ազգք. որովհետև լին աւերեցաւ: 3 * Վս այնորիկ այսպէս ասէ ադոնայի Տր. ահաւասիկ ես 'ի վր քո՛ ծո՛ւր. և հանից 'ի վր քո ազգս բազումս. որպէս ելանիցէ ծով ալեօք իւրովք: 4 * Եւ կործանեսցեն զպարիսպն ծուրայ. և կործանեսցեն զաշտարակն նր. և հոսեցից զհող նր 'ի նմանէ. և արարից զնա յապառաժ: 5 * Եւ ձգանք ուռկանաց եղիցին 'ի մէջ ծովուն. զի ես խօսեցայ՝ ասէ Տր Տր. և եղիցի յաւար ազգաց: 6 * Եւ դստերք նր 'ի դաշտի սպանցին. և ծանիցեն, 7 զի ես եմ Տր: * Զի այսպէս ասէ ադոնայի Տր. ահաւասիկ ես ածից 'ի վր քո ծո՛ւր զնաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց 'ի հիւսիսոյ. որ է արքայ արքայից: կառօք՝ և երիվարօք. գունդագունդ հեծելովք ազգաց բազմաց յոյժ: 8 * Նա զդստերս քո 'ի դաշտին սրով կոտորեսցէ. և զքեւ շուրջ պահ դիցէ. և փոս փորեսցէ. և պատնէշ կանգնեսցէ. 9 և ամրութի զինուց: * Եւ զգեղարդունս իւր յանդիմանս քո կանգնեսցէ: և զպարիսպս քո՝ և զաշտարակս քո կործանեսցէ սրով իւրով: 10 * Եւ 'ի բազմութէ հեծելոց նր ծածկեսցէ զքեզ փոշի նց. 'ի ձայնէ հեծելոց՝ և յանուոց կառաց նր շարժեսցին պարիսպք քո, 'ի մտանել նր 'ի դրունս քո. որպէս որ մտանիցէ 'ի դաշտէ 'ի քաղաք: 11 * Սմբակօք երիվարաց իւրեանց կոխեսցեն զհրապարակս քո. և զազգդ քո սրով կոտորեսցէ: և զհաստատութի զօրութե քոյ յերկիր կործանեսցէ: 12 * Եւ աւար առցէ զզօրութիս քո. և կողոպտեսցէ զինչս քո. և կործանեսցէ զպարիսպս քո. և զցանկալի ապարանս քո տապալեսցէ. և զքարինս և զփայտ և զհողն 'ի ծով ամասցէ: 13 * Եւ քակեսցէ զբազմութի արուեստականաց քոց՝ և ձայն երգոց քոց մի՛ ևս լուիցի 'ի քեզ: 14 * Եւ արարից զքեզ յապառաժ. և եղիցիս 'ի ձգանս ուռկանաց. և մի՛ ևս շինեսցիս. զի ես խօսեցայ՝ ասէ ադոնայի Տր: 15 * Զի այսպէս ասէ Տր Տր ծուր. ո՞չ ապաքէն 'ի ձայնէ կործանման քոյ 'ի հեծելոյ վիրաւորաց քոց՝ 'ի մեռանելոյ սրոյ 'ի միջի քում շարժեսցին կղզիք քո: 16 * Եւ իջցեն յաթոռոց իւրեանց ամ իշխանք ազգաց ծովուդ. և վերացուսցեն զխոյրս իւրեանց 'ի գլխոյ իւրց. և զպէսպէս հանդերձս իւրեանց մերկասցին. տագնապելով տագնապեսցին. յերկիր կործանեսցին. և զարհուրեսցին 'ի կորստեան իւրեանց. և յոգւոց հանցեն 'ի վերայ քո: 17 * Ողբս առցեն 'ի վր քո՝ և ասասցեն. զիա՞րդ կորեար՝ քակտեցար. 'ի մէջ ծովուդ քաղաքդ հոյակապ: որ եղեր զօրացեալ 'ի մէջ ծովուն՝ դու և բնակիչք քո. որ զարհուրեցուցանէիր զամ բնակիչս քո: 18 * Եւ երկիցեն կղզիք յաւուրէ կործանման քոյ: և խռովեսցին կղզիք ծովուդ 'ի քերբելոյն քումմէ: 19 * Զի այսպէս ասէ Տէր Տէր. յորժամ տաց զքեզ քաղաքդ աւերակ. իբրև զքաղաքս՝ որք բնաւ չիցեն բնակեալք. 'ի հանել ինձ 'ի վերայ քո զանդունդս. ծածկեսցեն զքեզ ջուրք բազումք: * Եւ

արևելեայց

Երեմ. 7.34

20 * Եւ իջուցից զքեզ առ իջեալսն 'ի խորխորատ. առ ժողովուրդ յաւիտենից. եւ բնակեցուցից զքեզ 'ի խորս երկրի իբրեւ զաւերակս յաւիտենից ընդ իջեալսն յաւիտենից 'ի խորխորատն. զի մի եւս բնակեսցիս, եւ մի կանգնեսցիս յերկիր կենաց։ 21 * 'Ի կորուստ մատնեցից զքեզ՝ եւ ոչ եւս իցես. խնդրեսցիս, եւ ոչ գտցիս յաւիտեան։

## ԳԼ. ԻԷ.

Ողբ 'ի վերայ Ծուրայ։

1 Եւ եղեւ բան Տն առ իս՝ եւ ասէ։ 2 * Որդի մարդոյ՝ ողբս առ 'ի վերայ Ծուրայ։ 3 * Եւ ասասցես Ծուր. որ բնակեալդ ես 'ի մուտս ծովուդ. վաճառաշահ ազգաց՝ 'ի կղզեաց բազմաց։ այսպէս ասէ Տր Տր Ծուր. դու ասէիր՝ ես զարդարեցի զիս 'ի զարդ գեղոյ իմոյ։ 4 * 'Ի սիրտ ծովու բէեղիմայ՝ որդիքն քո զարդարեցին զքեզ։ 5 * Մայրք 'ի Սանայիր լեռնէ շինեցան քեզ՝ պահանգք եւ տախտակք. եւ նոճիք 'ի Լիբանանէ առան. առնել քեզ կայմս եղեւնափայտեայս։ 6 * 'Ի Բասանէ արարին զղեկս նաւաց քոց. եւ զմեհեանս քո շինեցին 'ի փղոսկրէից. ապարանս անտառախիտս 'ի կղզեացն Քետիմաց։ 7 * Բեհեզ ընդ դիպակի գործեցաւ քեզ. պատուաս յեգիպտոսէ արկանելիք քեզ 'ի փառս։ եւ հանդերձ ծիրանի՝ եւ կապուտակ 'ի կղզեացն յեղիմացւոց եղեն 'ի զարդ պաճուճանաց քոց։ 8 * Եւ իշխանք քո բնակիչք Սիդոնացւոց. եղեն արադացիք նաւավարք քո. եւ իմաստունք քո Ծուր՝ որք էին 'ի քեզ՝ նոքա եղեն քեզ նաւապետք։ 9 * Եւ ծերքն մատենադէտք. եւ իմաստունք նց որք էին 'ի քեզ. նոքա զօրացուցանէին զխորհուրդս քո. եւ ամ նաւք ծովու. եւ նաւավարք նոցա եղեն քեզ երթալ յարեւմուտս արեւմտից։ 10 * Ելդացիք՝ եւ լիբէացիք թիկունք զօրութեան քոյ՝ արք ընտիրք պատերազմօղք՝ որք կախեցին զվահանս՝ եւ զսաղաւարտս իւրեանց 'ի քեզ. եւ նոքա փառաւորեցին զքեզ։ 11 * Որդիքն արադացւոց. զօրութիւնքն իւրեանց զպարսպօքն քովք պատեալ կային՝ եւ պահէին զաշտարակս քո. զկապարճս իւրեանց կախեցին շուրջանակի 'ի պարիսպս քո. եւ նոքա իսկ բովանդակեցին զգեղեցկութիւն քո։ 12 * Կարկեդոնացիք վաճառականք քո. 'ի բազմութենէ զօրութեան քոյ՝ զարծաթ՝ եւ զոսկի՝ եւ զպղինձ՝ եւ զերկաթ՝ զանագ՝ եւ զկապար ետուն 'ի վաճառս քո։ 13 * Յոյնք՝ եւ ամ որք շուրջ զնովաւ էին մարդավաճառք քո։ եւ անօթս պղնձիս ետուն 'ի վաճառս քո։ 14 * Եւ 'ի տանէ Թորգոմայ ձիով եւ հեծելովք եւ ջորւովք լցին զվաճառս քո։ 15 * Որդիք հռօմայեցւոց վաճառականք քո՝ յաճախեցին 'ի կղզեաց զվաճառս քո. ժանեօք փղոսկրէիւք. եւ երթեւեկացն մարդիկ տային գինս։ 16 * Վաճառք քո բազմացեալք յաղխամաղխէ քումմէ յափեկայ ստաշխըն. եւ երփներփն նարօտուց 'ի Թարշշոյ. եւ հռամօթ՝ եւ կորքոդ լցին զվաճառս քո։ 17 * Հրէաստան եւ որդիքն Իղի վաճառականք քո ցորենով՝ եւ խնկօք՝ եւ կասեաւ՝ եւ ընտիր ընտիր մեղու. եւ իւղով՝ եւ ռետինաւ լցին զաղխամաղխս վաճառաց քոց։ 18 * Դամասկոս վաճառականք քո. 'ի բազումաղխէ՝ եւ 'ի բազում զօրութենէ քումմէ։ գինի 'ի Քեղբոնայ՝ եւ ասր 'ի Միղետայ։ 19 * Դան՝ եւ Յաւան 'ի Մէօզենայ բերէին քեզ գինի 'ի վաճառս քո։ յասեղայ՝ երկաթ գործեալ անիւս պատեալս 'ի վաճառս քո։ 20 * Դեդանացիք վաճառականք քո՝ ածէին կառս ընտիրս ջորեօք հանդերձ։ 21 * Արաբացիք՝ եւ ամ իշխանք կեդարու. եւ նոքա վաճառականք ընդ ձեռամբ քով։ 22 * Սաբայ եւ Հռեգմայ. եւ նոքա վաճառականք քո. իւղս անուշունս. եւ ակունս պատուականս. եւ զոսկի ետուն 'ի վաճառս քո։ 23 * Խառան՝ եւ Քանան՝ եւ Դեդան՝ եւ նոքա վաճառականք քո։ Սաբայ. եւ Ասուր՝ եւ Քաղմանն վաճառականք քո։ 24 * Որք բերէին քեզ վաճառս ընդ մաքիմ։ եւ ընդ գաղիմ հիր՝ եւ կարմիր՝ եւ կապուտակ. եւ երփներփն նարօտս. եւ գանձս ընտիրս մանդակեալս չուանօք։ 25 * 'Ի նաւս նոճիս. որով էր վաճառն քո։ նաւք 'ի բազմութենէ վաճառաց քոց. եւ յաճախութենէ աղխամաղխի քոյ. լցար՝ ծանրացար յոյժ 'ի սիրտ ծովու։

26 * 'Ի ջուրս բազումս վարեցին զքեզ նաւավարք քո. հողմ հարաւոյ խորտակեաց զքեզ 'ի սիրտ ծովու։ 27 * Եւ զօրութիւն քո. եւ վարձ քո. եւ խառնաղանջից քոց։ եւ նաւավարք քո. եւ նաւապետք քո, եւ խորհրդականք քո. եւ խառնաղանջք քո 'ի խառնաղանջից քոց. եւ ամ արք պատերազմօղք քո՝ որք 'ի քեզ. եւ ամ ժողովք որք 'ի միջի քում՝, անկցին 'ի սիրտ ծովու՝ յաւուր կործանման քոյ։ 28 * 'Ի ձայնէ բարբառոյ քոյ նաւավարք քո երկիւղիւ զարհուրեսցին։ 29 * Եւ իջցեն 'ի նաւաց իւրեանց ամ նաւավարք քո՝ եւ նաւաստիք քո. առաջապահք նաւաց յափին ծովու կացցեն։ 30 * Եւ աղաղակեսցեն 'ի վր քո.

քո. և փոխեսցեն զձայնս իւրեանց. գուժեսցեն դառնապէս՝ հող 'ի գլուխ լիցին: *31 Ընդ մոխիր թաւալեսցին. գերծցեն զգլուխս 'ի կնտութիւն. և քրձազգածք լիցին. և լասցեն 'ի վ͞ր քո դառնացեալ սրտիւք: *32 Կոծ դառնութեան առցեն որդիք ն͞ց. 'ի վ͞ր քո ողբս առցեն՝ և ողբասցեն. ո՞վ էր իբրև զծուր՝ որ լռեաց՝ և դադարեաց 'ի մէջ ծովուն: *33 Որչափ ինչ գտեր քեզ վարձս 'ի ծովէ անտի. լցուցեր զազգս 'ի բազմութենէ քումմէ՝ և յաղխամաղխէ վաճառաց քոց. մեծացուցեր զա͞մ թագաւորս երկրի: *34 Արդ՝ բեկար 'ի ծովուդ, 'ի խորս ջուրց վաճառքք քո. և ա͞մ ժողովք քո 'ի միջի քում, անկան ա͞մ նաւավարք քո: *35 Ա͞մ բնակիչք կղզեաց տրտմեցան 'ի վ͞ր քո. և թագաւորք նոցա զարհուրելով զարհուրեցան՝ և հեղին զարտասուս զերեսօք իւրեանց 'ի վ͞ր քո: *36 Վաճառականք ազգաց շշեցին 'ի վ͞ր քո. 'ի կորուստ մատնեցար՝ և այլ ոչ ևս իցես յաւիտեան՝ ասէ Տր Ա.Ծ:

## ԳԼ: ԻԸ:

'Ի վերայ իշխանին Ծուրայ:

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ: *2 Եւ դու որդի մարդոյ՝ ասա՛ ցիշխանդ Ծուրայ: այսպէս ասէ Տր Տր. փոխանակ զի հպարտացաւ սիրտ քո. և ասացեր՝ թէ Ա.Ծ եմ ես. և 'ի բնակութեան Ա.Յ բնակեցայ 'ի սիրտ ծովու. մարդ ես դու՝ և չես Ա.Ծ. և ետուր զսիրտ քո իբրև զսիրտ Ա.Յ: *3 Միթէ իմաստնագո՞յն իցես քան զդանիէլ. կամ իմաստունք խրատեցին զքեզ հանճարովք իւրեանց: *4 Միթէ իմաստութեամբ քով կամ խորհրդով արարեր դու քեզ զզօրութիւն: և ստացար զոսկի և զարծաթ 'ի գանձս քո: *5 Կամ բազմութեամբ իմաստութեան քոյ և վաճառուց յաճախեցեր զզօրութիւն քո. և բարձրացաւ սիրտ քո զօրութեամբն քով: *6 Վ͞ն այսորիկ այսպէս ասէ Տր Տէր. վ͞ն զի ետուր զսիրտ քո իբրև զսիրտ Ա.Յ: *7 Փոխանակ այնորիկ ահաւասիկ ես ածից 'ի վ͞ր քո օտարս ժանտս գործս յազգաց. և թափեսցեն զսուրս իւրեանց 'ի քեզ. և 'ի վ͞ր գեղոյ իմաստութեան քոյ. և տարածեսցեն զգեղեցկութիւն քո: *8 Եւ կործանեսցեն զքեզ՝ և մի՛ յառնիցես. և մահու վիրաւորաց 'ի սիրտ ծովու: *9 Միթէ ասելով ասիցես՝ Ա.Ծ եմ ես՝ առաջի վիրաւորացն քոց. բայց դու մարդ ես՝ և ոչ Ա.Ծ. և 'ի բազմութեան վիրաւորաց քոց:

Եւ մեռցիս մահու վիրաւո_րաց

10 *Եւ մեռելոց անթլփատից մեռանիցիս 'ի ձեռաց օտարաց. զի ես խօսեցայ՝ ասէ ադոնայի Տէր: *11 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ: որդի մարդոյ՝ ա՛ռ ողբս 'ի վ͞ր իշխանին Ծուրայ: *12 Եւ ասասցես ցնա՝ այսպէս ասէ Տր Տր. դու կնիք նմանութեան. լի իմաստութեամբ՝ և կատարեալ գեղով: *13 'Ի փափկութեան դրախտին Ա.Յ եղեր. և զա͞մ ակամբ պատուականաւ 'ի քեզ կապեցեր. զսարդիոն. և զտպազիոն. և զմրուխտ. և զկարկեհան. և զշափիղայ. և զյասպիս. և զարծաթ. և զոսկի. զգոճազմ. զակատն. զմեղեսիկ. զոսկէքարն. զբիւրեղն. զեղնգնաքարն: և ոսկւով լցուցեր զգանձս քո՝ և զշտեմարանս քո 'ի քեզ. յորմէ յորմէ հաստատեցար՝ և հանդերձեցար: *14 Ընդ օծելոյ քրովբէին ետու զքեզ 'ի լեառն սր. Ա.Յ. և եղեր 'ի մէջ հրեղէն վիմաց: *15 Եղեր անարատ յաւուրսն քո. յորմէ յորմէ հաստատեցեր դու. մինչև գտան անիրաւութիւնք 'ի քեզ: *16 'Ի բազմութենէ վաճառուց քոց լցեր զշտեմարանս քո անօրէնութեամբ. մեղար՝ և վիրաւորեցար. 'ի լեռնէն Ա.Յ իջոյց զքեզ՝ քերովբէ վարսաւոր, 'ի միջոյ հրեղէն վիմացն: *17 Եւ բարձրացաւ սիրտ քո 'ի գեղեցկութեան քում. և ապականեցաւ հանճար քո հանդերձ գեղովն քով՝ վ͞ն բազմութեան մեղաց քոց. ընկեցի զքեզ յերկիր յանդիման թագաւորաց. ետու զքեզ 'ի խայտառակութիւն: *18 Վ͞ն բազմութեան մեղաց քոց, և խարդախութեան վաճառաց քոց՝ պղծեցեր զսրբութիւնս քո: հանից հուր 'ի միջոյ քումմէ՝ և նոյն կերիցէ զքեզ. և տաց զքեզ 'ի մոխիր յերկրին քում առաջի ա͞մ տեսողաց քոց: *19 Եւ ամենեքին որք ճանաչիցեն զքեզ 'ի մէջ ազգաց, տրտմեսցին վ͞ն քո՝ զի եղեր 'ի կորուստ. և ոչ ևս իցես յաւիտեան: 'Ի վերայ Ծայդանու: *20 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ: *21 Որդի մարդոյ՝ հաստատեա՛ զերեսս քո 'ի վերայ Ծայդանու՝ մարգարէա՛ց 'ի վ͞ր ն͞ր: *22 Եւ ասասցես: այսպէս ասէ ադոնայի Տր. ահաւասիկ ես 'ի վ͞ր քո Ծայդան. և փառաւորեցայց ես 'ի քեզ. և ծանիցես, թէ ես եմ Տր՝ յառնել իմ 'ի քեզ դատաստանս. և սրբեցայց ես 'ի քեզ: *23 Եւ առաքեցից 'ի վ͞ր քո զմահ. և զարիւն 'ի հրապարակս քո. և անկցին վիրաւորք 'ի միջի քում. պատեսցին շուրջ զքև սրովք. և ծանիցեն, թէ ես եմ Տր: *24 Եւ ոչ ևս եղիցին տանն իէլի խոչ դառնութեան. և փուշ ցաւոց յամենեցունց՝ որք շուրջանակի անարգեցին զն͞ս. և ծանիցեն, թէ ես եմ

եմ ադոնայի Տր։ 25 * Այսպէս ասէ ադոնայի Տր. և ժողովեցից զտունն Իղի յազգաց՝ ուր ցրուեցան անդր. և սուրբ եղէց առաջի ազգաց և ժողովրդոց. և բնակեսցեն յերկրին իւրեանց՝ զոր ետու ծառային իմոյ յակոբու ։ 26 * Եւ բնակեսցեն 'ի նմա յուսով. շինեսցեն տունս, և տնկեսցեն այգիս, և բնակեսցեն յուսով. յորժամ արարից դատաստան յամենեսեան, որք շուրջանակի անարգեցին զնս. և ծանիցեն, թէ ես եմ Տր Աճ նց. և Աճ հարցն նոցա ։

## Գլ: ԻԹ։

'Ի վերայ Եգիպտոսի, և փարաւոնի Նաբուգոդոնոսորին Եգիպտացւոց։

1 Յամին տասներորդի՝ յամսեանն տասներորդի՝ որ օր մի էր ամսոյն. և եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 2 * Որդի մարդոյ՝ հաստատեա՛ զերեսս քո 'ի վր փարաւոնի թագաւորին եգիպտացւոց։ մարգարէա՛ց 'ի վերայ նր՝ և 'ի վր ամ եգիպտոսի։ 3 * Խօսեա՛ց՝ և ասասցես ։ այսպէս ասէ Տր Տր՝ ահաւասիկ ես 'ի վերայ քո փարաւոն արքայ եգիպտացւոց վիշապդ մեծ՝ որ նստիս 'ի մէջ գետոց. որ ասես թէ իմ են գետքս՝ և ես արարի զսոսա ։ 4 * Եւ ես արկից դանդանաւանդ 'ի կզակս քո. և մեծացուցից զձկունս գետոյդ 'ի թևս քո. և հանից 'ի միջոյ քումմէ զգետս քո. և ամ ձկունք գետոյդ կցեսցին 'ի թևս քո ։ 5 * Եւ կործանեցից զքեզ երագ երագ՝ և զամ ձկունս գետոյդ քոյ։ Ըն երեսս դաշտին անկանիցին, և մի ժողովեսցին. և մի ևս հաւաքեսցիս. զի գազանաց երկրի՝ և թռչնոց երկնից ետու զքեզ 'ի կերակուր ։ 6 * Եւ ծանիցեն ամ բնակիչք եգիպտացւոցն՝ թէ ես եմ Տր. փոխանակ ‖ զի եղեր գաւազան եղեգնեայ տանդ Իղի ։

‖ Եսայ. 36. 6.

7 * Եւ յորժամ յենուին 'ի քեզ՝ ելանէիր ընդ ձեռս նց. յորժամ բուռն հարկանէր զքէն ամ ձեռն. և յորժամ յենուին 'ի քեզ՝ խորտակէիր. և բեկանէիր զմէջս նց։ 8 * Վս այնորիկ այսպէս ասէ Տր Տր. ահաւադիկ ես ածեմ 'ի վր քո սուր՝ և կորուսից 'ի քէն զամ, զմարդ՝ և զանասուն։ 9 * Եւ եղիցի երկիրդ եգիպտացւոց 'ի կորուստ՝ և յաւերակ. և ծանիցեն, թէ ես եմ Տր. փոխանակ զի ասէիր՝ թէ գետքս իմ են, և ես արարի զսոսա ։ 10 * Վասն այդորիկ ահաւադիկ ես 'ի վր քո՝ և 'ի վր ամ գետոյդ քոյ. և տաց զերկիրդ եգիպտացւոց յաւերակ՝ և 'ի կորուստ՝ 'ի մակդօղայ՝ և 'ի սուհենայ մինչև 'ի սահմանս եթեովպացւոց ։ 11 * Եւ մի անցցէ ընդ նա ոտն մարդոյ. և կճղակ անասնոյ ընդ նա մի գնասցէ. և մի բնակեսցի ամս քառասուն ։ 12 * Եւ տաց զերկիր նորա 'ի կորուստ, 'ի մէջ աւերակ երկրին. և քաղաքք նր 'ի մէջ աւերեալ քաղաքացն. եղիցին յապականութի ամս քառասուն ։ և ցրուեցից զեգիպտոս 'ի մէջ ազգաց. և ցրուեցից զնոսա ընդ գաւառս ։ 13 * Զի այսպէս ասէ Տր Տր՝ յետ ամաց քառասնից ժողովեցից զեգիպտացիս յազգաց՝ ուր ցրուեցան 'ի նոսա ։ 14 * Եւ դարձուցից զգերութիւն եգիպտացւոց. և բնակեցուցից զնոսա յերկրին պաթուրէ. յերկրին ուստի առան. և եղիցի անդ իշխանութի մի տառապեալ՝ քան զամ իշխանութիս ։ 15 * Եւ եղիցի խոնարհագոյն. և մի ևս բարձրասցի 'ի վր ազգացն. և սակաւաւորս արարից զնս. զի մի բազմասցին 'ի մէջ ազգաց։ 16 * Եւ մի ևս եղիցին տանն Իղի յոյս յիշատակի անօրէնութե երթալ զհետ սոցին նց. և ծանիցեն՝ թէ ես եմ ադոնայի Տր ։ 17 * Եւ եղև 'ի քսաներորդի և յեօթներորդի ամին. որ օր մի էր ամսոյն առաջնոյ. եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 18 * Որդի մարդոյ՝ Նաբուգոդոնոսոր արքայ բաբելացւոց աշխատեցոյց զզօրս իւր աշխատութբ մեծաւ 'ի վերայ ծուրայ. ամ գլուխք կնդացեալք՝ և ամ ուսք դերծեալք՝ և վարձք նմա և զօրացն իւրոց ոչ եղեն առ 'ի ծառայութենն ծուրայ՝ զոր ծառայեցին ինձ 'ի նմա ։ 19 * Վասն այսորիկ այսպէս ասէ Տր Տր՝ ահաւասիկ տաց Նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց զերկիրն եգիպտացւոց ։ և առից զբազմութի նորա. և աւարեսցէ զաւար նր. և կողոպտեսցէ զկողոպուտ նր. և եղիցի վարձ զօրաց նր ։ 20 * Փոխանակ հարկին յորում ծառայեաց ինձ 'ի ծուր, ետու նմա զերկիրն եգիպտացւոց ընդ ամի՝ զոր արարին ինձ ։ այսպէս ասէ Տր Տր ։ 21 * Յաւուր յայնմիկ ծագեսցի եղջիւր ամ տանն Իղի. և քեզ տաց բերան բաց 'ի մէջ նոցա. և ծանիցես, թէ ես եմ Տր ։

## Գլ: Լ։

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 2 * Որդի մարդոյ՝ մարգարէա՛ց՝ և ասասցես։ այսպէս ասէ ադոնայի Տր Տր. 3 ո՛հ ո՛հ օր ։ * Զի մերձ է օր Տն՝ օր մգի. հասեալ է վախճան ազգաց։ 4 * Եւ եկեսցէ սուր 'ի վր եգիպտացւոց. և եղիցի խռովութի 'ի կողմանս եթեօպացւոց. և անկցին վիրաւորք յեգիպտոս.

տոս. և առցեն զբազմութի նր. և տապալեսցին հիմունք նր: 5 *Պարսիկք, և կրետացիք, և լիբեացիք, և լիդացիք, և ամ խառնաղանճքն. և յորդւոց ուխտին իմոյ 'ի նմա՝ սրով կոտորեսցին:

խառնիճ- ծաղանճ

6 *Այսպէս ասէ ադոնայի Տր. կործանեսցին մյթքն եգիպտացւոց. և իջցէ հպարտութի զօրութե նր. 'ի մակդօ-ղայ, մինչև ցսուհէն, սրով անկցին 'ի նմա. ասէ ադոնայի Տր: 7 *Եւ աւա-րեսցի 'ի մէջ ապականեալ աշխարհաց. և քաղաքք նց 'ի մէջ քաղաքաց աւերե-լոց: 8 *Եւ ծանիցեն՝ թէ ես եմ Տր. յորժամ արկից հուր 'ի վր եգիպտաց-ւոց. և խորտակեսցին ամ օգնականք նր: 9 *Յաւուր յայնմիկ ելցեն հրեշ-տակք յերեսաց իմոց տագնապաւ՝ ա-պականել զմնացորդս եթէովպացւոց. և եղիցի խռովութի 'ի նոսա յաւուրն եգիպտացւոց. քանզի ահաւասիկ հա-սեալ է: 10 *Այսպէս ասէ Տր Տր. և կորուսից զբազմութի եգիպտացւոց 'ի ձեռն նաբուգոդոնոսորայ արքային բաբելացւոց: 11 *Նա՛ և զաւրք նր ընդ նմա. ժանտագործք յազգաց առա-քեսցին կործանել զերկիրն. և թա-փեսցեն զսուրս իւրեանց 'ի վր եգիպ-տոսի՝ և լցցի երկիրն վիրաւորօք: 12 *Եւ տաց զգետս նոցա յանապատ. և մատնեցից զերկիրն 'ի ձեռս չարաց. և կորուսից զերկիր լրիւ իւրով ձեռօք այլազգեաց՝ զի ես Տէր խօսեցայ:

‖ Զաքա 13. 2.

13 *‖ Այսպէս ասէ Տէր Տր. կորուսից զգարշելիսն. և դադարեցուցից զմե-ծամեծս 'ի մեմփացւոց. և զիշխանս յերկրէն եգիպտացւոց. և ոչ ևս լինի-ցին: և արկից ահ 'ի վր երկրին եգիպ-տացւոց: 14 *Եւ կորուսից զերկիրն պա-թուրէս: արկից հուր զտայանու. և խնդրեցից զվրէժ եգիոսպօլացւոց:

աղէքսան- դրու

15 *Եւ հեղից զբարկութի իմ՝ 'ի վերայ սաինայ զօրութե եգիպտացւոց. և կո-րուսից զբազմութի մեմփացւոց: 16 *Եւ տաց զհուր յեգիպտոս. և խռո-վութբ խռովեսցի սայիս: և եղիցի քաղաքն դիոսպօլացւոց յերդիծումն. և բղխեսցին ջուրք: 17 *Երիտասարդք արեգ քաղաքի, և բուբաստայ՝ անկ-ցին սրովք. և կանայք նց 'ի գերութե վարեսցին: 18 *Եւ խաւարեսցի տիւ 'ի տափնաս. 'ի փշրել անդ ինձ զգաւա-զանն իշխանութե եգիպտացւոց. և կորիցէ անդ հպարտութի զօրութե նր. և զնոյն մէգ ծածկեսցէ. դստերք նր 'ի գերութե վարեսցին: 19 *Եւ ա-րարից դատաստանս յեգիպտոս. և ծանիցեն, թէ ես եմ Տր: 20 *Եւ եղև 'ի մետասաներորդի ամի անդ՝ յամ-

աղէքսան- դրու

սեանն առաջնում, որ օր եօթն էր ամ-սոյն. եղև բան Տն առ իս՝ և ասէ: 21 *Որդի մարդոյ՝ զբազուկս փարաւոնի արքային եգիպտացւոց խորտակեցից. և ահա ոչ ևս պատեսցի 'ի բժշկութի. և ոչ տացին 'ի վր նր դեղք. կամ թէ զօրանայցէ առնուլ զսուր 'ի ձեռն: 22 *Վասն այնորիկ այսպէս ասէ Տր Տր. ահաւասիկ ես 'ի վերայ փարաւոնի ար-քային եգիպտացւոց. և խորտակեցից զբազուկս նր հզօրս. զներդապատս. և զմձառապատս: և ընկեցից զսուրն 'ի ձեռանէ նր: 23 *Եւ ցրուեցից զեգիպ-տոս ընդ ազգս. և հոսեցից զնս ընդ գաւառս: 24 *Եւ զօրացուցից զբա-զուկս արքային բաբելացւոց. և տաց զսուր իմ 'ի ձեռս նր. և ածցէ զայն 'ի վր եգիպտացւոց՝ և աւարեսցէ զաւար նր. և կողոպտեսցէ զկապուտ նորա: 25 *Եւ զօրացուցից զբազուկս արքային բաբելացւոց. և բազուկքն փարաւոնի լքցին. և ծանիցեն թէ ես եմ Տր. 'ի տալ ինձ զսուր իմ 'ի ձեռս արքային բաբելացւոց. և ձգեսցի զնա 'ի վերայ երկրին եգիպտացւոց: 26 *Եւ ցրուեցից զեգիպտոս ընդ ազգս. և հոսեցից զնս ընդ գաւառս՝ և ծանիցեն ամ եգիպ-տացիքն՝ թէ ես եմ Տր:

## Գլ: ԼԱ:

1 Եւ եղև յամին մետասաներորդի յամսեանն երրորդի՝ որ օր մի էր ամսոյն: եղև բան Տն առ իս՝ և ասէ: 2 *Որդի մարդոյ՝ ասա ցարքայն եգիպ-տացւոց՝ ցփարաւոն և ցզօրս իւր. ո՞ւմ նմանեցուցեր զքեզ 'ի հպարտութեդ քում: 3 *Ահաւանիկ ասուր իբրև նոճ մի 'ի լիբանան գեղեցիկ շառաւիղաւ՝ և խիտ ոստօք՝ և բարձր մեծութբ. 'ի մէջ ամպոց եղև գլուխ նր: 4 *Ջուր սնոյց զնա. և անդունդք բարձրացու-ցին զնա. և զգետս նր էած շուրջ զտն կոլք իւրովք. և զանտառախիտս իւր արձակեաց ընդ ամ փայտս դաշտին: 5 *Վն այնորիկ բարձրացաւ մեծութի նր քան զամ ծառս դաշտին. և տարա-ծեցան ոստք նր. և բարձրացան շա-ռաւիղք նորա 'ի ջուրց բազմաց: 6 *'Ի տարածանիլ իւրում, 'ի շառաւ-իղս նր բնակեցան ամ թռչունք երկ-նից. և 'ի ներքոյ ոստոց նր ծնան ամ գազանք դաշտի. և ընդ հովանեաւ նր բնակեցան ամ բազմութիք ազգաց: 7 *Եւ եղև գեղեցիկ բարձրութբ իւր-ով. վն երկայնութե ոստոց իւրոց. զի եղեն արմատք նր 'ի ջուրս բազումս: 8 *Մայրդ՝ և սարոյ. և նոճ 'ի դրախտին Այ. ոչ հաւասարեցան շառաւիղաց

նորա

նորա մայրքն. և սօսիք ոչ նմանեցան
ոստոց նր. ամ փայտք 'ի դրախտին այ
ոչ նմանեցան նմա գեղեցկութբ:
*Ես անստուախիտ ոստոց նր. և նա_ 9
խանձեցան ընդ նա ամ ծառք դրախ
տին փափկութե Այ: *Վասն այ_ 10
նորիկ այսպէս ասէ Տր Տր. փոխա_
նակ զի մեծացար մեծութբ. և հասին
ծայրք քո յամպս. և տեսի զհպարտու
թին: *Եւ մատնեցի զքեզ 'ի ձեռս 11
իշխանին ազգաց. և արարին զնա 'ի կո
րուստ: *Եւ հանին զնա. և սատակե 12
ցին զնա օտարք ժանտագործք յազ_
գաց. և տապալեցին զնա 'ի վերայ լե_
րանց: յամ ձորս անկան ոստք նորա. և
խորտակեցաւ ստեղն նր ընդ ամ դաշտս
երկրի. և իջին 'ի հովանւոյ նր ամենայն
ազգք ազանց. և յատակեցին զնա:
*Եւ 'ի գլորելն նր հանգիստ եղև ամ 13
թռչնոց երկնից. և 'ի ստեղն նր հասին
ամ գազանք վայրի: *Զի մի ևս 14
հպարտասցին 'ի մեծութեն իւրեանց
ամ փայտք ջրասունք. և ոչ արձակես
ցեն զծայրս իւրեանց ընդ ամպս. և մի
կացցեն 'ի հպարտութե իւրեանց՝ իբ_
րև զնա: որք ըմպիցեն զջուր՝ ամենե_
քին 'ի մահ մատնեսցին 'ի խորս երկրի.
'ի մէջ որդւոց մարդկան իջելոցն 'ի խոր
խորաստ: *Այսպէս ասէ Տր Տր. յաւուր 15
յորումէջ 'ի դժոխս. սուգ առին 'ի վր
նորա անդունդք. և արգելի զգետս նր.
և խից արկից ջուրց բազմաց և տխրե
ցաւ 'ի վր նր լիբանան. և ամ ծառք
դաշտի լքան 'ի վր նորա: *'Ի ձայնէ կոր 16
ծանման նորա՝ դղրդեցան ազգք. յոր
ժամ իջուցի զնա 'ի դժոխս ընդ իջեալս
'ի գուբ: և մխիթարեցին զնա 'ի սան
դարամետսն ամ ծառք փափկութեն.
և ընտիր ընտիր գեղեցիկքն 'ի լիբա_
նան. որք էին ջրարբիք: *Քանզի 17
նոքա իջին ընդ նմա 'ի վիրաւորս սրոյ
'ի դժոխս. և զաւակք նորա որք բնա_
կեալքէին ընդ հովանեաւ նորա. ընդ_
միջեալ կենաց իւրեանց սատակեցան:
*Ո՞ւմ նմանեցուցեր զօրութբ՝ և փա 18
ռօք՝ և մեծութբ՝ և ծառօք փափկու_
թե. էջ՝ և զիջիր հանդերձ ծառօք
փափկութե քոյ 'ի խորս երկրի՝ 'ի մէջ
անթլփատից ննջեցելոց ընդ վիրաւ
որս սրոյ. այնպէս փարաւոն և ամ բազ
մութի զօրութե իւրոյ՝ ասէ Տր Տր:

## ԳԼ: ԼԲ:

Եւ եղև յամին երկոտասաներորդի 1
յամսեանն երկոտասաներորդի՝
որ օր մի էր ամսոյն. և եղև բան Տն
առ իս՝ և ասէ: *Որդի մարդոյ՝ ողբս 2
առ 'ի վր փարաւոնի արքային եգիպ_
տը

տացւոց՝ և ասասցես զնա: առիւծա_
ցար 'ի մէջ ազգաց. և նմանեցար վի_
շապի 'ի մէջ ծովու. և ոգորէիր ընդ
գետս քո. և առ ոտիւք պղտորէիր
զջուրս. և առաւթուր կոխան առնէիր
3 զգետս քո: *Այսպէս ասէ Տր Տր.
‖ պատեցից զքեզ թակարդօք իմովք. ‖ Եզե. 12. 13.
և ժողովօք զօրաց բազմաց. և հանից
4 զքեզ կարթիւ իմով: *Տախտապարե և 17. 20
ցից զքեզ 'ի վր երկրի. և լցցին քե
դաշտք. և իջուցից 'ի վր քո զամենայն
թռչունս երկնից. և յագեցուցից 'ի
5 քէն զամ գազանս երկրի: *Եւ տաց
զմարմինս քո 'ի վր լերանց. և լցուցից
6 զձորս յարենէ քումմէ: *Եւ արբես_
ցի երկիր յապականէ քումմէ. 'ի բազ
մութենէ քոյ 'ի վր լերանց. զձորս լցից
7 'ի քէն: *‖Եւ պատրուակեցից զեր_ ‖ Եսայ.
կինս 'ի շիջանել քում. և խաւարեցու 13. 10.
ցից զաստեղս նր: զարեգակն ամպովք Յովէլ
ծածկեցից. և լուսին մի տացէ զլոյս 2. 10. և
8 իւր: *Եւ զամ լուսաւորս խաւարե_ 3. 15.
ցուցից 'ի վր քո. և տաց խաւար 'ի վր Մատ.
9 քո՝ ասէ Տէր Տր: *Եւ զայրացուցից 24. 29.
զսիրտս ազգաց բազմաց. 'ի ժամանա
կի իբրև հանից զգերութին քո ընդ
10 ազգս՝ յերկիր զոր ոչ գիտիցես: *Եւ
տրտմեսցին 'ի վր քո ազգք բազումք.
և թագաւորք նց զարհուրելով զար_
հուրեսցին. 'ի թռչել սրոյ իմոյ առա_
ջի երեսաց նց. ակն ունիլ կործանման
իւրեանց. յօրէ կործանման քոյ:
11 *Զի այսպէս ասէ Տր Տր. սուր ար_
քային բաբիլացւոց եկեսցէ 'ի վր քո:
12 *Հանդերձ սրով հսկայից. և կործա_
նեցից զզօրութիւն քո. եկեսցեն ամ
ժանտագործք ազգաց՝ և յարուսցեն և կորուս
զհպարտութի եգիպտացւոց. և սա_ ցեն
13 տակեսցին ամ զօրութիքն նր: *Եւ
կորուսից զամ անասուն նորա 'ի ջուրց
բազմաց. և մի պղտորեսցէ զնա ոտն
մարդոյ. և կճղակ անասնոց մի կոխես_
14 ցէ զնա: *Եւ ապա դադարեսցեն
ջուրք նց: և գետք նոցա նման իւղոյ
15 գնասցեն. ասէ ադոնայի Տր: *Յոր_
ժամ տաց զեգիպտոս 'ի կորուստ. և
աւերեսցի երկիր լրիւ իւրով. յորժամ
ցրուեցից զամ բնակիչսն 'ի նմանէ. և
16 ծանիցեն թէ ես եմ Տր: *Ողբ էն՝ և
ողբասցեն զնա. և դստերք ազգաց ող_
բասցեն զնա. 'ի վր եգիպտոսի՝ և 'ի վր
ամ զօրութեն նր ողբասցեն՝ ասէ Տէր
17 Տր: *Եւ եղև յամին երկոտասանե_
րորդի՝ յամսեանն առաջնում. որ օր
հնգետասան էր ամսոյն: եղև բան Տն
18 առ իս՝ և ասէ: *Որդի մարդոյ ողբս
առ 'ի վր զօրութեն եգիպտոսի. և ի_
ջուսցեն զդստերս նր ազգքն՝ զմեռեալս

'ի խորս երկրի, առ իջելոց 'ի խորխորատ։ *'Ի ջուրց վայելչութե. էջ՝ ննջեա ընդ անթլփատս։ *'Ի մէջ վիրաւորաց սրով անկցին ընդ նմա. և դադարեսցէ ամ զօրութի նր։ *Եւ ասասցեն ընդ քեզ սկայքն. եկ էջ 'ի խորս խորխորատին. զի քան զո՞ լաւ էիր դու. էջ՝ և դադարեա ընդ անթլփատս՝ 'ի մէջ վիրաւորաց սրոյ։ *Անդ Ասուր՝ և ամ ժողովք նորա՝ ամ վիրաւորք անդ։ *Տուեալ գերեզմանն նց 'ի խորս խորխորատին. և եղև ժողովք նորա շուրջ զշիրմօք նորա. ամ վիրաւորք անկեալ սրով. որք արարին զգերեզմանս իւրեանց 'ի յատակս գբոյ. և եղեն ժողովք շուրջ զգերեզմանօք նր։ ամենեքին վիրաւորք անկեալք 'ի սրոյ. որք ետուն զահ իւրեանց 'ի վր երկրին կենդանութե։ *Անդ Եղամ. և ամ զօրութիք նր՝ շուրջ զգերեզմանաւ նր. ամենեքին վիրաւորք անկեալք 'ի սրոյ իջին անթլփատք 'ի խորս երկրի. որք ետուն զահ իւրեանց յերկրին կենդանութե. և ընկալան զտանջանս իւրեանց ընդ իջեալսն 'ի խորխորատ։ *'Ի մէջ վիրաւորաց։ †*Անդր տուեալ մոսոք՝ և Թոբէլ. և զօրութիք նց շուրջ զգերեզմանաւ նր. ամ վիրաւորք նր ամենեքին անթլփատք. վիրաւորք անկեալք 'ի սրոյ. որք ետուն զահ իւրեանց 'ի վր երկրին կենդանութե։ *Եւ ոչ ննջեցին ընդ հսկայսն անկեալսն յաւիտենից՝ որք իջին 'ի դժոխս պատերազմօք զինուքն իւրեանց. և եդան անօրէնութիքն նց 'ի վերայ ոսկերացն իւրեանց. զի զարհուրեցուցին զսկայս 'ի կենդանութե իւրեանց։ *Եւ դու 'ի մէջ անթլփատիցն խորտակեսցիս. և ննջեսցես 'ի մէջ վիրաւորացն սրոյ։ *Անդ Եդոմ, և թագաւորք իւր՝ և ամ իշխանք նորա. որք ետուն զզօրութիւն իւրեանց 'ի հարուածս սրոյ. և նոքա ընդ վիրաւորսն ննջեցին. ընդ իջեալսն 'ի խորխորատ։ *Անդ ամ իշխանք հիւսիսոյ՝ և ամենեքին նոքա զօրավարք Ասորեստանւոյն իջեալք վիրաւորք հանդերձ ահիւն զօրութե իւրեանց. ամօթալից ննջեցին անթլփատք՝ ընդ վիրաւորս սուսերաց. և տարան զտանջանս իւրեանց ընդ իջեալսն 'ի խորխորատ։ *Զնս տեսցէ փարաւոն. և մխիթարեսցի 'ի վր ամ զօրութե նց. վիրաւորք փարաւոնի 'ի սրոյ՝ և ամ զօրութիւն նր՝ ասէ Տր Տր։ *Զի ետ զահ իւր յերկրին կենդանութե. և ննջեսցէ 'ի մէջ անթլփատիցն վիրաւորելոց սրով՝ փարաւոն՝ և ամ բազմութիւն իւր ընդ նմին՝ ասէ Տէր Տէր։

† ԱՅԴԷՆ ՂԱՆՉՈՂԷՆ ՆՐ ՆԵՐ ՀԱՆՈՒՐՑ ԺՈՂՈՎՐԴ ԴՈՅ ՆՐ. ՆԵՐ ՇՐՋԱ ԿԱՅԱՆ ՆՐ ԳԵՐԵԶ ՄԱՆ ՆՐ. ԱՄԵՆԵ_ ՔԵԱՆ ԱՆ ԱՆԹԼ_ ՓԱՏՔ ԻՆ ՍՊԱՆԵԼՔ ՍՐՈՎ. ՂԷ ԵՏՈՒՆ ԶԵՐԿԻՒՂ ԻՒՐԵԱՆՑ ՅԵՐԿԻՐ ԿԵՆԴԱ_ ՆԵԱՑ՝ ԻՒ ԲԱՐՁԻՆ ԶԱՆԱՐ_ ԳԱՆԱԿԻՒՐ ԵԱՆՑ ՀԱՆ ԴԵՐՁՆՈ_ ԻՕՔ. ՈՐՔ ԻՋԻՆ 'Ի ԽՈՐԽՈ_ ՐԱՏՆ. 'Ի ՄԷՋ ԱՊԱ_ ՆԵԼՈՑՆ ԵԴԱՆ։

## ԳԼ: ԼԳ.

Առ որդին Յախօէոս։

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ. 2 *Որդի մարդոյ՝ խօսեաց ընդ որդիս ժողովրդեան քո, և ասասցես ցնոսա։ երկիր մի յորոյ վերայ ածիցեմ զսուր. և առնուցու ազգ երկրին զայր մի յինքեանց՝ և կացուցանիցեն զնա 3 դէտ։ *Եւ տեսանիցէ սուր եկեալ յերկիրն. և փող հարկանիցէ՝ և ազդ 4 առնիցէ ժողովրդեանն։ *Եւ լսելով լսիցէ զձայն փողոյն՝ և ոչ զգուշասցի. և հասանիցէ սուրն. և ըմբռնիցէ զնա. արիւն նորա 'ի գլուխ նորին եղիցի։ 5 *Զի զձայն լուեալ փողոյն, և ոչ զգուշացաւ. արիւն նորա 'ի վր նորին եղիցի. և նա զի զգուշացոյց, զանձն իւր 6 ապրեցոյց։ *Եւ եթէ տեսանիցէ դէտն զսուրն եկեալ՝ և ոչ նշանակիցէ փողով. և ազգն ոչ զգուշանայցէ. և եկեալ սուրն ըմբռնիցէ 'ի նոցանէ անձն մի. նա վս անօրէնութե իւրոյ ըմբռնեցաւ. և զարիւն նր 'ի ձեռաց 7 դիտին խնդրեցից։ *‖Եւ դու որդի մարդոյ՝ դէտ ետու զքեզ տանդ Իէլի. և լուիցես բանից բերանոյ իմոյ. զգու8շացուսցես զնս իբրև յինէն։ *Յասել ինձ ցմեղաւորն, թէ մահու մեռանիցիս. և դու ոչ խօսիցիս զգուշացուցանել զամպարիշտն 'ի ճանապարհէ իւրմէ. ինքն անօրէնն յանօրէնութե իւրում մեռցի՝ և զարիւն նորա 'ի ձե9ռաց քոց խնդրեցից։ *Ապա թէ դու յառաջագոյն պատմեսցես ամպարշտին զճանապարհս իւր դառնալ նմա 'ի նմանէ. և ոչ դարձցի 'ի ճանապարհէ իւրմէ. ինքն յանօրէնութե իւրում մեռցի. և դու զանձն քո ապրեցու10սցես։ *Եւ դու որդի մարդոյ՝ ասա ցտունդ Իէլի. այսպէս խօսեցարուք՝ և ասացէք. եթէ մոլորութիքն մեր՝ և անօրէնութիք մեր 'ի մեզ են. և մեք 'ի նոսին մաշիմք. և զիա՞րդ ապրիցուք։ 11 *‖Ասա ցնոսա. կենդանի եմ ես՝ ասէ Ադոնայի Տէր. ոչ կամիմ զմահ ամպարշտին. որպէս զդառնալ ամպարշտին 'ի չար ճանապարհէ իւրմէ՝ և կեալ. դառնալով դարձարուք 'ի ճանապարհաց ձերոց չարաց՝ և ընդէ՞ր մեռա12նիք տունդ Իէլի։ *Եւ դու որդի մարդոյ՝ ասա ցորդիս ժողովրդեան քո. արդարութի արդարոյն ոչ փրկեսցէ զնա՝ յաւուր յորում մոլորեսցի։ և անօրէնութի անօրինին ոչ չարչարեսցէ զնա՝ յաւուր յորում դառնայցէ յամ անօրէնութեէ իւրմէ. և արդարն ոչ կա_

‖ Եզ. 3. 17.

‖ Եզ. 18. 23. և 32.

կարասցէ ապրել յաւուր մեղաց իւրոց։ *Յասել ինձ ցարդարն՝ թէ կելով կեցցես. և նա յուսացեալ յարդարութիւն իւր՝ առնիցէ զանօրէնութիւն. ամ արդարութիւնք նորա մի՛ յիշեսցին. այլ անօրէնութեամբ իւրով զոր արար՝ նովին մեռցի։ 13 *Եւ յասել ինձ ցամպարիշտն թէ մահու մեռցիս. և դարձցի 'ի մեղաց իւրոց. և արասցէ իրաւունս՝ և զարդարութիւն։ 14 *Եւ զգրաւ պարտապանին 'ի բաց տայցէ. և զյափշտակութիւն դարձուցանիցէ. 'ի հրամանս կենաց գնասցէ. չառնել զանիրաւութիւն. կելով կեցցէ՝ և մի՛ մեռցի։ 15 *Ամ մեղք իւր՝ զոր մեղաւ՝ մի՛ յիշեսցին. զի իրաւունս՝ և արդարութիւն արար. նովիմբք կեցցէ։ 16 *Եւ ասեն որդիք ժողովրդեանն քո. ոչ ուղիղ է ճանապարհ Տն. նա նց ճանապարհն ոչ է ուղիղ։ 17 *'Ի դառնալ արդարոյն յարդարութենէ իւրմէ՝ և առնել անիրաւութիւն, նովիմբք մեռցի։ 18 *Եւ 'ի դառնալ մեղաւորին յանօրէնութենէ իւրմէ. առնիցէ իրաւունս՝ և արդարութիւն, նովիմբք կեցցէ։ 19 *‖Եւ այս է՝ զոր ասացիք՝ թէ ոչ ուղիղ է ճանապարհ Տն։ զիւրաքանչիւրոք ըստ ճանապարհաց իւրոց դատեցից զձեզ տունդ իսլի։ 20 [‖Վեր. 18. 25.] *Եւ եղև յամին երկոտասաներորդի 'ի տասներորդի յամսեանն՝ որ օր հինգ էր ամսոյն գերութեան մերոյ. եհաս առ իս ոմն զերծեալ յէմէ, և ասէ. առաւ քաղաքն։ 21 *Եւ ձեռն Տն եղեալ 'ի վր իմ յերեկորեայն՝ մինչև եկեալ էր նա. և եբաց զբերան իմ. մինչև եկեալ էր ընդ առաւօտն. և 'ի բանալ բերանոյ իմոյ ոչ ևս ամփոփեցաւ անդրէն։ 22 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 23 *Որդի մարդոյ՝ բնակիչք աւերակաց երկրին իսլի ասեն. մի մարդ էր աբրահամ՝ և կալաւ զերկիրն. և արդ մեք բազումք եմք. և մեզ տուեալ է երկիրն 'ի ժառանգութիւն. ոչ ժառանգիցեմք զնա։ 24 *Վս այնորիկ ասա ցնոսա։ այսպէս ասէ ադոնայի Տր. որովհետև 'ի վերայ արեան ուտէք. և զաչս ձեր արձակէք 'ի կուռս. և զարիւն հեղուք. և կամիք զերկիրն ժառանգել։ 25 *Եղիցի դա ձեզ 'ի սուր՝ զի արարէք պղծութիւս. իւրաքանչիւր զկին ընկերի իւրոյ պղծէիք. և արդ այդու ժառանգիցէք զերկիրն։ 26 *Վս այնորիկ ասա ցնոսա։ այսպէս ասէ Տր՝ Տր. կենդանի եմ ես. եթէ ոչ, որք յաւերակսն իցեն, սրով անկցին. և որք 'ի երեսս դաշտին իցեն, գազանաց անապատին տացին 'ի կերակուր։ և որք ընդ պարսպաւորօքն իցեն՝ և յայրս, մահու կոտորեցից։ 27 *Եւ տաց զերկիրն յաւերակ՝ և յապականութիւն, և կորիցէ հպարտութիւն զօրութեան նց. և աւերեսցին լերինք իսլի՝ զի մի՛ ոք իցէ. որ գնասցէ ընդ նոսա։ 28 *Եւ ծանիցեն՝ թէ ես եմ Տր։ և արարից զերկիր նց աւերակ. և աւերեսցի վասն ամ գարշելեացն՝ զոր արարին։ 29 *Եւ դու որդի մարդոյ. որդիք ժողովրդեան քո շրջին, քրթմնջեն զքէն առ պարսպօքն՝ և 'ի դրունս ապարանից. և ասեն, մի ցմի այր ցեղբայր իւր. ժողովիցուք՝ երթիցուք՝ լուիցուք զպատգամսն. որք ելին 'ի Տէ։ 30 *Եւ արդ գան առ քեզ, որպ ժողովեալք 'ի ժողովուրդ. և նստին առաջի քո ժողովուրդն իմ. լսեն զբանս քո՝ և ոչ առնեն զնոսա. զի ստութիւն է 'ի բերանս նց. և զհետ պղծութեան իւրեանց գնան սրտիւք իւրեանց։ 31 *Եւ դու լինիցիս նց իբրև զձայն երգոց քաղցրաբարբառ յօրինելոյ։ և լուիցեն զբանս քո՝ և ոչ արասցեն։ 32 *Եւ յորժամ դայցեն՝ ասասցեն. ահաւասիկ եհաս. և ծանիցեն, թէ մարգարէ դոյ 'ի մէջ նոցա։ 33

## ԳԼ. ԼԴ.

Աղ. հովուաց իսրայելի։

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 2 *Որդի մարդոյ՝ մարգարէա՛ց 'ի վր հովուաց իսլի. մարգարէա՛ց՝ և ասասցես ցհովիւսն. այսպէս ասէ Տր Տր՝ ‖ ո՛հ հովիւք իսլի. միթէ հովիւք զանձինս արածեն. ո՛չ հովիւք զխաշինս արածեն։ [‖Երեմ. 23. 1.] 3 *Արդ աւադիկ զկաթն ուտէք. և զասր ագանիք. զպարարտն զենուք. և զխաշինս իմ ոչ արածէք։ [Վեր. 13. 3.] 4 *Զտկարացեալսն ոչ զօրացուցիք. և զհիւանդացեալսն ոչ բժշկեցիք. զչարչարեալսն ոչ յանձանձեցիք. և զբեկեալսն ոչ պատեցիք. զմոլորեալսն ոչ դարձուցիք. և զկորուսեալսն ոչ խնդրեցիք՝ զհաստահարուստն աշխատ արարիք։ 5 *Եւ ցրուեցան խաշինք իմ. քանզի ոչ գոյին նոցա հովիւք. և եղեն կերակուր գազանաց անապատի, և ցրուեցան։ 6 *Եւ մոլորեցան խաշինք իմ ընդ ամ լերինս. և ընդ ամ բլուրս բարձունս. և ընդ ամ երկիր ցրուեցան խաշինք իմ. և ոչոք էր՝ որ խնդրէր. և ոչ այն՝ որ դարձուցանէր։ 7 *Վս այնորիկ հովիւք լուարուք զպատգամ Տն։ 8 *Կենդանի եմ ես՝ ասէ ադոնայի Տր Տր. եթէ ոչ՝ փոխանակ զի եղեն խաշինք իմ 'ի կերակուր գազանաց անապատի. վն զի ոչ գոյին հովիւք. և ոչ խնդրէին հովիւքն զխաշինս

իմ. և բուծին հովիւքն զանձինս իւրեանց. և զխաշինս իմ ոչ արածեին ։ 9 * Փոխանակ այնորիկ լուարուք զպատգամ Տն ։ 10 * Այսպէս ասէ Տր Տր. ահաւասիկ ես ՚ի վերայ հովուացդ. և պահանջեցից զխաշինս իմ ՚ի ձեռաց նց. և դադարեցուցից զդոսա յարածելոյ զխաշինս իմ. և ոչ ևս արածեսցեն զնս. և փրկեցից զխաշինս իմ ՚ի ձեռաց նց. և ոչ եղիցին դոցա ՚ի կերակուր ։ 11 * Զի այսպէս ասէ Տր Տր. ահաւադիկ ես ինքնին խնդրեցից զխաշինս իմ. և այց արարից դոցա ։ 12 * Որպէս խնդրիցէ հովիւ զհօտ իւր՝ յաւուր յորում իցէ մէգ՝ և մառախուղ ՚ի մէջ խաշանց իւրոց վատնելոց. այնպէս խնդրեցից զխաշինս իմ՝ և ժողովեցից զնս յամ տեղեաց, ուր ցրուեցան ՚ի նոսա, միգի և մառախղի ։ 13 * Եւ հանից զնս յազգաց. և ժողովեցից զնոսա ՚ի գաւառաց. և տարայց զնոսա յերկիր իւրեանց. և արածեցից զնոսա ՚ի վր լերանց Իղի ։ 14 * Եւ ՚ի ձորս՝ և յամ բնակութի երկրին յարօտս փափկութե՝ արածեցից զնոսա ՚ի լերինն բարձու Իղի, և անդ եղիցի մակաղատեղ նց. անդ դադարեսցեն՝ և անդ հանգիցեն ՚ի գրգութեց. և յարօտս պարարտութե՝ արածեսցին ՚ի վր լերանցն Իղի ։ 15 * Ես արածեցից զխաշինս իմ. և ես հանգուցից զնոսա. և ծանիցեն թէ ես եմ Տր. այսպէս ասէ Տր Տր ։ 16 * Զկորուսեալն խնդրեցից. և զմոլորեալն դարձուցից. զբեկեալն պատեցից. և զվատեալն զօրացուցից. զգէրն և զհզօրն պահեցից. և արածեցից զնս իրաւամբք ։ 17 * Եւ դուք խաշինք իմ. այսպէս ասէ Տր Տր. ահաւասիկ ես ոչխար առ ոչխար դատեցից. և խոյ ընդ խոյ ։ 18 * Զինչ ձեզ բաւական զգեղեցիկ արօտն յառաջագունոյն արածել. այլև զմնացեալ ևս ճարակն ՚ի ձէնջ առոտն կոտորէք. և ըզջուրսն յստակս ըմպէիք. և զմնացեալսն առոտն պղտորէիք ։ 19 * Եւ խաշինք իմ զկոխան ոտիցն ձերոց ճարակեին. և զջուրսն պղտորեալ ՚ի կճղակաց ձերոց ըմպէին ։ 20 * Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր Տր. ահաւասիկ ես դատեցից ՚ի մէջ հարուստ՝ և անաւագ ոչխարաց ։ 21 * Փոխանակ զի կողմամբք և ուսովք ձերովք գրթցէիք՝ ոգորէիք՝ և եղջերօք ձերովք խեթկէիք զամենայն անաւագն. և ՚ի բաց մերժէիք զնոսա. մինչև ցրուեցան խաշինք իմ ։ 22 * Եւ փրկեցից զխաշինս իմ. և ոչ ևս լինիցին ՚ի յափշտակութի. դատեցից խոյ առ խոյ ։ 23 * ‖ Եւ կացուցից ՚ի վր նոցա հովիւ մի. զծառայ իմ զԴաւիթ. և նա հովուեսցէ զնոսա. նա եղիցի նց հովիւ ։ 24 * Եւ ես Տր եղէց նոցա Ած. և Դաւիթ ծառայ իմ իշխան ՚ի մէջ նց. ես Տէր խօսեցայ ։ 25 * Եւ եդից ընդ Դաւթի ուխտ խաղաղութե. և ապականեցից զգազանս չարս յերկրէ. և բնակեսցին յանապատին յուսով. և ննջեսցեն յանտառս ։ 26 * Եւ տաց նց շուրջ զլերամբ իմով օրհնութի. և տաց ձեզ անձրև. և եղիցին անձրևք օրհնութե ։ 27 * Ծառք ագարակի տացեն զպտուղս իւրեանց. և երկիր տացէ զզօրութի իւր. և բնակեսցին յերկրի իւրեանց յուսով խաղաղութեց. և ծանիցեն թէ ես եմ Տր. ՚ի խորտակել ինձ զլուծ պարանոցի նոցա. և փրկեցից զնոսա ՚ի ծառայեցուցչաց իւրեանց ։ 28 * Եւ ոչ ևս եղիցին յաւար ՚ի մէջ ազգաց. և գազանք երկրի մի ևս կերիցեն զնոսա. և բնակեսցին յուսով. և ոչոք իցէ, որ զարհուրեցուցանիցէ զնս ։ 29 * Եւ կանգնեցից նց տունկ խաղաղութե. և ոչ ևս վատեսցին ՚ի սովու ՚ի վր երկրի. և նախատինս յազգաց ոչ ևս կրեսցեն ։ 30 * Եւ ծանիցեն թէ ես Տր Ած նոցա՝ ընդ նոսա եմ. և նոքա ժողովուրդ իմ տունն Իղի. ասէ Տր Տր ։ 31 * ‖ Եւ դուք խաշինք իմ՝ ոչխարք արօտի իմոյ՝ մարդիկ էք. և ես Տր Ած ձեր՝ ասէ Տր Տր ։

‖ Եսայ. 40. 11. — Ովս. 3. 5. — Յովհ. 1. 45. 10. 11. 14. — ‖ Յովհ. 10. 11.

## ԳԼ. ԼԵ.

՚Ի վերայ Եդովմայեցւոց ։

1 Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ ։ 2 * Որդի մարդոյ՝ դարձո զերեսս քո ՚ի վր լերինդ Սեիրայ. մարգարէա ՚ի վերայ դորա՝ և ասասցես ցդա ։ 3 * Այսպէս ասէ Տէր Տր՝ ահաւասիկ ես ՚ի վր քո լեառնդ Սեիր. և ձգեցից զձեռն իմ ՚ի քեզ. և տաց զքեզ յանապատ, և աւերեսցիս ։ 4 * Եւ զքաղաքս քո յաւեր դարձուցից. և եղիցիս աւերակ. և ծանիցես թէ ես եմ Տր ։ 5 * Փոխանակ զի եղեր ՚ի թշնամութի յաւիտենից. և դարանակալ նստէիր նենգութբ տանն Իղի ՚ի ձեռն թշնամեաց սրոյ. ՚ի ժամանակի նեղութե, ՚ի ժամանակի անիրաւութե (յետին) վախճանի ։ 6 * Վն այնորիկ կենդանի եմ ես՝ ասէ Տր Տր. եթէ ոչ յարիւն մեղար՝ և արիւն հալածեսցէ զքեզ ։ 7 * Եւ տաց զլեառն Սեիր յաւերակ՝ և յանապատ. և կորուսից ՚ի դմանէ ըզ մարդ՝ և զանասուն ։ 8 * Եւ լցից զլերինս վիրաւորօք քովք՝ զբլուրս քո՝ և զձորս քո. և յամենայն դաշտս քո վիրաւորեալք ՚ի սրոյ անկցին ՚ի քեզ ։

* Եւ

9 *Եւ յաւերակ յաւիտենից եդից զքեզ․ և քաղաքք քո ոչ ևս շինեսցին․ և ծանիցեն, թէ ես եմ Տէր։ 10 *Փոխանակ ասելոյն թէ երկու ազգքն՝ և երկու աշխարհք իմ եղիցին․ և ժառանգեցից զնոսա․ և Տր անդ էր։ 11 *Վասն այնորիկ կենդանի եմ ես՝ ասէ Տր Տր․ և արարից ընդ քեզ ըստ թշնամութեն քում․ և ըստ նախանձուն քում, զոր արարեր ատել զնոսա․ և ծանուցայց քեզ․ յորժամ դատեցից զքեզ։ 12 *Եւ ծանիցես, թէ ես եմ Տր․ լուայ զձայն հայհոյութեց քոց․ զի ասէիր՝ թէ լերինք Իղի աւերակք մեզ տուեալ են ՚ի կերակուր։ 13 *Եւ մեծաբանեցեր ՚ի վերայ իմ բերանով քով․ և հնչեցիք առ իս զբանս ձեր, և ես լուայ։ 14 *Այսպէս ասէ Տէր Տր՝ յուրախութի ամ երկրի արարից զքեզ աւերակ։ 15 *Փոխանակ զի ուրախ եղեր ժառանգութե տանն Իղի՝ զի ապականեցաւ։ 16 *Նոյնպէս արարից զքեզ․ և եղիցիս աւերակ լեառնդ սէիր․ և իդումեա սատակեսցի․ և ծանիցեն, թէ ես եմ Տր Ած նոցա։

## ԳԼ․ ԼԶ։

### Ի վերայ լերանց Իսրայէլի։

1 Եւ դու որդի մարդոյ մարգարէա՛ց ՚ի վերայ լերանցն Իղի․ ‖ և ասասցես ցլերինս Իղի․ լուարո՛ւք զպատգամ Տն։ 2 *Այսպէս ասէ Տր Տր․ փոխանակ զի ասաց թշնամին ՚ի վր ձեր՝ վա՛շ վա՛շ․ աւերակք յաւիտենից ՚ի ժառանգութի եղեն մեզ։ 3 *Վն այդորիկ մարգարէա՛ց՝ և ասասցես․ այսպ ասէ Տր Տր․ փոխանակ զի եղէք յանարգութի ամ ազգաց՝ որք շուրջ զձեօք են․ և վտարանդի եղէք ազգաց բազմաց․ խօսք լեզուաց և նախատինք ազգաց։ 4 *Վն այդորիկ՝ լերինք Իղի՝ լուարո՛ւք զպատգամ ադօնայի Տն․ այսպէս ասէ Տր Տր ցլերինս՝ և ցբլուրս՝ ցխորս՝ և ցձորս՝ և ցաւերակս ապականեալս՝ և ցքաղաքս լքեալս՝ որք եղեն յաւէր՝ և ՚ի կոխումն մնացելոց ազգացդ՝ որք շուրջ զձեօք են։ 5 *Վն այնորիկ այսպէս ասէ Տր․ եթէ ոչ հրով բարկութեան իմոյ խօսեցայց ՚ի վր այլոց ազգացն՝ և ՚ի վր ամ եդօմայեցւոցն․ զի արարին զերկիրն իմ իւրեանց ՚ի վտարանդի․ ուրախութբ անարգեցին զանձինս ապականել աւարաւ։ 6 *Վն այնորիկ մարգարէա՛ց ՚ի վերայ երկրին Իղի․ և ասասցես ցլերինս՝ և ցբլուրս՝ և ցձորս՝ և ցդաշտս․ այսպէս ասէ Տր Տր․ ահաւասիկ ես նախանձու իմով՝ և բարկութբ խօսեցայ․ փոխանակ կրելոյն ձերոյ նախատինս ՚ի հեթանոսաց։

7 *Վասն այնորիկ այսպ ասէ ադօնայի Տր․ ամբարձից զձեռն իմ ՚ի վր ազգացն․ որք շուրջ զձեօքդ են․ նոքա ընկալցին զանարգանս իւրեանց։ 8 *Բայց զձեր՝ լերինքդ Իղի՝ զխաղող և զպտուղս կերիցէ ժողովուրդ իմ Իէլ․ զի ակն ունին դառնալոյ։ 9 *Ահաւասիկ ես հայեցայց ՚ի ձեզ․ և անկանիցիք ՚ի գործ․ և սերմանեցէք։ 10 *Եւ բազմացուցից ՚ի ձեզ զմարդիկ․ և համօրէն զտունն Իղի իսպառ՝ և բնակեսցին քաղաքք, և աւերակք շինեսցին։ 11 *Եւ բազմացուցից ՚ի ձեզ զմարդ՝ և զանասուն․ բազմասցին, աճեսցին, և բնակեցուցից զձեզ որպէս ՚ի սկզբանէն․ և բարի արարից ձեզ ոպ և յառաջագոյն՝ և ծանիջիք՝ թէ ես եմ Տր։ 12 *Եւ սերեցից ՚ի ձեզ մարդիկ զժողովուրդն իմ Իէլ․ և ժառանգեսցեն զձեզ․ և եղիջիք նոցա ՚ի բնակութի․ և ոչ ևս լինիցիք անզաւակք ՚ի նոցանէ։ 13 *Այսպէս ասէ Տր Տր․ փոխանակ զի ասացին ցքեզ՝ թէ երկիր մարդակեր ես դու․ և անզաւակ յազգէ քումմէ եղեր։ 14 *Վասն այնորիկ ոչ ևս լինիցիս մարդակեր․ և զազգդ քո անզաւակ ոչ ևս արասցեն՝ ասէ Տր Տր։ 15 *Եւ անարգանք ազգաց ՚ի ձեզ ոչ ևս լինիցին․ և նախատինս ժողովրդոց այլոց ոչ ևս կրեսցեն․ և ազգդ քո այլ ոչ ևս անզաւակեսցի՝ ասէ Տր Տր։ 16 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 17 *Որդի մարդոյ՝ տունդ Իղի բնակեցան յերկրին իւրեանց․ և պղծեցին զնա ճանապարհօք իւրեանց՝ և կռօք իւրեանց՝ և պղծութբք իւրեանց՝ ըստ պղծութե ճանապարհի եղև ճանապարհ դոցա առաջի իմ։ 18 *Եւ հեղի զսրտմտութիւն իմ ՚ի վր դոցա վասն արեանն՝ զոր հեղին յերկրին․ և կռօք իւրեանց պղծեցին զնա։ 19 *Եւ ցրուեցի զդոսա ընդ ազգս․ և հոսեցի ընդ գաւառս ըստ ճանապարհաց դոցա․ և ըստ մեղաց իւրեանց դատեցի զդոսա։ 20 *‖Եւ մտին յազգս․ և ուր մտինն, անդ պղծեցին զանուն իմ սուրբ․ յասելն ցնս․ եթէ ժողովուրդ Տն են դոքա․ և յերկրէ նր ելին։ 21 *Եւ խնայեցի ՚ի դոսա վասն անուան իմոյ սրբոյ՝ զոր պղծեցին տունդ Իղի ՚ի մէջ ազգացդ յոր մտինն ՚ի դոսա։ 22 *Վն այդորիկ ասա՛ ցտունն Իղի․ այսպէս ասէ Տր Տր․ ո՛չ ձեզ ինչ առնեմ տուն Իղի․ այլ վն անուան իմոյ սրբոյ՝ զոր պղծեցիք ՚ի մէջ ազգացդ՝ յոր մտիք ՚ի դոսա։ 23 *Եւ սրբեցից զանուն իմ մեծ՝ որ պղծեցաւ ՚ի մէջ ազգացդ՝

‖ Եզե. 6. 3.

Եւ ՚ի ժառանգութի եղէք

Եւ սերմանեցէք

Մարդածախ

‖ Եսայ. 52. 5. Հռոմ. 2. 24.

դացդ՝ զոր դուք պղծեցիք 'ի մէջ դոցա. և ծանիցեն ազգք՝ թէ ես եմ Տէր. ասէ Ադոնայի Տր̃: 'Ի սրբելն իմում 'ի ձեզ յանդիման դոցա: 24 *Եւ առից զձեզ 'ի հեթանոսաց. և ժողովեցից զձեզ յամ̃ ազգաց. և տարայց զձեզ յերկիրն ձեր: 25 *Եւ ցանեցից 'ի վ̃ր ձեր ջուր սուրբ. և սրբեսջիք յամ̃ պղծութ̃եց ձերոց. և յամ̃ կռոց ձերոց սրբեցից զձեզ: 26 *‖ Եւ տաց ձեզ զսիրտ նոր. և զոգի նորնորոգեցից 'ի ձեզ: և հանից զսիրտն քարեղէն 'ի մարմնոց ձերոց. և տաց ձեզ զսիրտ մարմնեղէն: 27 *Եւ զոգի իմ տաց ձեզ. և արարից, զի յարդարութ̃իս իմ գնայցէք, և զիրաւունս իմ պահիցէք. և առնիցէք զնոսա: 28 *Եւ բնակիցիք յերկրին՝ զոր ետու հարցն ձերոց. և եղիցիք ինձ 'ի ժողովուրդ. և ես եղէց ձեզ յԱ̃ծ: 29 *Եւ զերծուցից զձեզ յամ̃ պղծութ̃եց ձերոց: կոչեցից զցորեան, և բազմացուցից զնա. և ոչ ածից 'ի վերայ ձեր զսով: 30 *Եւ բազմացուցից զպտուղ ծառոյ. և զարդիւնս անդոց. զի մի ևս ընդունիցիք զնախատինս սովու 'ի մէջ ազգաց: 31 *Եւ յիշեսջիք զճանապարհս ձեր չարս. և զգնացս ձեր զանբարիս. և տաղտկասջիք յերեսաց անօրէնութ̃եց ձերոց. և 'ի գարշելեացն նոցա: 32 *Ոչ վասն ձեր ինչ առնեմ զայս, ասէ Տր̃ Տր̃. այլ յայտնի լիցի ձեզ. ամաչեցէք՝ և պատկառեցարուք 'ի ճանապարհաց ձերոց տունդ Իլ̃ի: 33 *Այսպէս ասէ Տր̃ Տէր. յաւուր յորում սրբեցից զձեզ յամ̃ անօրէնութ̃եց ձերոց. և բնակեցուցից զձեզ 'ի քաղաքս, և շինեսցին աւերակք: 34 *Եւ երկիրն ապականեալ՝ գործեսցի: փոխանակ զի ապականեցաւ յանդիման ա̃մ անցաւորաց: 35 *Եւ ասասցեն, երկիրն ապականեալ եղև իբրև զպարտէզ փափկութ̃ե. և քաղաքքն աւերակք՝ ապականեալք՝ և քանդեալք, ամրացեալք նստան: 36 *Եւ ծանիցեն ազգք՝ որք միանգամ շուրջ զձեօք մնացեալք իցեն. թէ ես եմ Տր̃. որ շինեցի զաւերեալսն. և հաստատեցի զապականեալսն. ես Տր̃ խօսեցայ՝ և արարից: 37 *Այսպ̃ ասէ Տէր Տր̃. զայս ևս այց արարից տանդ Իլ̃ի. առնել դոցա. և բազմացուցանել զմարդիկ դոցա իբրև զխաշինս: 38 *Իբրև զոչխարս սր̃բս. իբրև զոչխարս Եր̃մի 'ի տօնս իւր. այնպէս եղիցին քաղաքք աւերեալք, լի խաշամբք մարդկան. և ծանիցեն թէ ես եմ Տր̃:

‖ Եզե. 11. 19.

'ի պօնա նալ.

## ԳԼ: ԼԷ.

Վասն Յարութեան:

1 Եւ եղև 'ի վերայ իմ ձեռն Տն̃. և եհան զիս ոգւով Տն̃. և եդ զիս 'ի մէջ դաշտին. և այն լի էր ոսկերօք 2 մարդկան: *Եւ շրջեցոյց զիս շուրջ զոսկերօքն. և ահա բազում յոյժ էին 'ի վերայ երեսաց դաշտին. և ցամաքեալք յոյժ: 3 *Եւ ասէ ցիս՝ որդի մարդոյ՝ իցէ թէ կենդանի լինիցին ոսկերքդ այդոքիկ: և ասեմ, Տր̃ Տր̃ դու 4 գիտես զայդ: *Եւ ասէ ցիս. որդի մարդոյ մարգարէա՛ց 'ի վ̃ր ոսկերացդ այդոցիկ՝ և ասասցես ցդոսա. ոսկերք ցամաքեալք՝ լուարուք զպատգամս Տն̃: 5 *Այսպէս ասէ Տր̃ Տր̃ ցոսկերսդ ցայդոսիկ. ահաւասիկ ես ածեմ 'ի վերայ 6 ձեր շունչ կենդանի: *Եւ տաց 'ի ձեզ մարմինս. և ածից 'ի վ̃ր ձեր մարմինս. և ձգեցից 'ի վ̃ր ձեր մորթ. և տաց զոգի իմ 'ի ձեզ. և լինիցիք կենդանիք. 7 և ծանիջիք, եթէ ես եմ Տէր: *Եւ մարգարէացայ որպ̃ և հրաման ետ ինձ. և եղև բարբառ 'ի մարգարէանալն իմում. և ահա շարժումն. և մերձեցաւ ոսկր առ ոսկր. առ իւրաքանչիւր յօդս: 8 *Եւ տեսի՝ և ահա ջիլք՝ և մարմինք պատէին. և ձգիւր 'ի վերայ նց̃ մորթ. 9 և շունչ ոչ գոյր 'ի նս̃: *Եւ ասէ ցիս, մարգարէա՛ց որդի մարդոյ՝ մարգարէա՛ց 'ի վ̃ր շնչոյն. և ասասցես ցշունչն. այսպէս ասէ Տր̃ Տր̃. եկ շունչ 'ի չորից հողմոց. և փչեա՛ց 'ի մեռեալս յայսո- 10 սիկ՝ և կեցցեն: *Եւ մարգարէացայ որպ̃ և հրաման ետ ինձ Տր̃. և եմուտ 'ի նոսա շունչ. և եղեն կենդանիք. և կանգնեցան՝ կացին 'ի վ̃ր ոտից իւրեանց, ժողովք բազումք յոյժ յոյժ: 11 *Եւ խօսեցաւ ընդ իս Տր̃. և ասէ: որդի մարդոյ. ոսկերքդ այդոքիկ ա̃մ տունդ Իլ̃ի են. և դոքա ասեն. չորացան ոսկերք մեր՝ հատաւ յոյս մեր՝ և մե- 12 ռաք: *Վ̃ն այդորիկ մարգարէա՛ց՝ և ասասցես ցդոսա. այսպ̃ ասէ Տէր Տր̃. ահաւադիկ ես բացից զգերեզմանս ձեր. և հանից զձեզ 'ի գերեզմանաց ձերոց ժողովուրդ իմ. և տարայց զձեզ 13 յերկիրն Իլ̃ի: *Եւ ծանիջիք՝ թէ ես եմ Տէր. 'ի բանալ ինձ զգերեզմանս ձեր՝ և հանել զձեզ 'ի գերեզմանաց ձե- 14 րոց ժողովուրդ իմ: *Եւ տաց զոգի իմ 'ի ձեզ. և լինիջիք կենդանիք. և եդից զձեզ յերկրին ձերում. և ծանիջիք թէ ես եմ Տր̃: խօսեցայ՝ և արա- 15 րից. ասէ Տր̃ Տր̃: *Եւ եղև բան Տն̃ 16 առ իս՝ և ասէ: *Եւ դու որդի մարդոյ՝

առ

մու դու քեզ զգաւազան մի։ և գրեա՛ 'ի նմա զՅուդայ և զորդիսն Իէլի զմերձաւորս նորա։ և առցես քեզ զգաւազանն երկրորդ. և գրեսցես 'ի նմա զՅովսեփայ՝ զգաւազանն Եփրեմի. և զամ որդիսն Իէլի, յաւելեալսն 'ի նա։ 17 * Եւ կցեսցես զնս ընդ միմեանս կապել՝ լինել գաւազան մի. և եղիցին 'ի ձեռին քում։ 18 * Եւ եղիցի, յորժամ ասասցեն ցքեզ որդիք ժողովրդեանն քո. ո՞չ պատմես մեզ՝ զինչ է այդ 'ի քեզ։ 19 * Եւ ասասցես ցնոսա. այսպէս ասէ Տր Տր. ահաւասիկ ես առից զազգդ Յովսեփու՝ որ է 'ի ձեռին Եփրեմի. և զազգդ Իէլի զմերձաւորս դորա. և տաց զնոսա յազգն Յուդայ. և եղիցին 'ի մի գաւազան. և եղիցին մի, 'ի ձեռին Յուդայ։ 20 * Եւ եղիցին գաւազանքդ յորս դու գրեցեր՝ 'ի ձեռին քում առաջի նց։ 21 * Եւ ասասցես ցնոսա։ այսպէս ասէ Տր Տէր. ահաւադիկ ես առնում ըզտունդ Իէլի 'ի միջոյ ազգացդ՝ յորս մտին 'ի նոսին. և ժողովեցից զդոսա յամ ազգաց՝ որք շուրջ զդոքօք են. և տարայց զդոսա յերկիրն Իէլի։ 22 *‖ Եւ տաց զդոսա յազգ մի յերկրին իմում 'ի լերինս Իէլի. և մի իշխան եղիցի 'ի վր ամենեցուն դոցա՝ և թագաւոր. և ո՛չ ևս եղիցին յերկուս ազգս. և ո՛չ ևս բաժանեսցին յերկուս թագաւորութիւնս։ 23 * Ո՛չ ևս պղծեսցին 'ի կուռս իւրեանց. և 'ի գարշելիս իւրեանց. և յամ ամպարշտութիւնս իւրեանց. և փրկեցից զդոսա յամ անօրէնութեանց դոցա. զոր մեղան 'ի նոսա։ և սրբեցից զդոսա. և եղիցին ինձ 'ի ժողովուրդ. և ես եղէց դոցա յԱծ։ 24 *‖ Եւ ծառայ իմ Դաւիթ իշխան 'ի մէջ դոցա։ և մի հովիւ եղիցի ամենեցուն դոցա. զի ըստ հրամանաց իմոց գնասցեն։ 25 * Եւ բնակեսցեն յերկրին իւրեանց՝ զոր ետու ես ծառայի իմում Յակոբայ. ուր բնակեցան հարքն իւրեանց. և բնակեսցեն դոքա 'ի նմա. և որդիք դոցա. և որդիք որդւոց դոցա մինչև ցյաւիտեան. և Դաւիթ ծառայ իմ եղիցի իշխան դոցա յաւիտեան։ 26 *‖ Եւ եդից դոցա ուխտ խաղաղութեան. և ուխտ յաւիտենական եղիցի ընդ դոսա. և տաց դոցա՝ և բազմացուցից զդոսա. և եդից զսրբութիւն իմ 'ի մէջ դոցա յաւիտեան։ 27 * Եւ եղիցի բնակութիւն իմ 'ի դոսա. և եղէց դոցա Ած. և դոքա եղիցին իմ ժողովուրդ։ 28 * Եւ ծանիցեն ազգք, թէ ես եմ Տր. որ սրբեցի զդոսա 'ի լինել սրբութեանց իմոց 'ի միջի դոցա յաւիտեան։

Յօհ. 10. 16. ‖ Եզկ. 34. 23. Յօհ. 1. 45. Եսայ. 40. 11. Երեմ. 23. 5. Դանի. 9. 24. ‖ Սաղմ. 109. 4. և 116. 2. Յօհ. 12. 34.

## ԳԼ։ ԼԸ։

'Ի վերայ Գոգայ։

1 Եւ ‖ եղև բան Տն առ իս՝ և ասէ։ 2 * Որդի մարդոյ՝ հաստատեա՛ զերեսս քո 'ի վր Գոգայ. և երկրին Մագոգայ. իշխանի Ռոսմոսքայ և Թոբելայ։ մարգարեա՛ց 'ի վր նր։ 3 * Եւ ասասցես ցնա։ այսպէս ասէ Տէր Տր. ահաւասիկ ես 'ի վր քո իշխանդ Ռոսմոսքայ և Թոբելայ։ 4 * Եւ պաշարեցից զքեզ. և արկից դանդանաւանդ 'ի կզակս քո. և ժողովեցից զքեզ. և զամ զօրութիւն քո. զհեծեալս և զերիվարս զվառեալս. և զսպառազէնս ազգաց բազմաց. վահանաւորս՝ սաղաւարտաւորս. սուսերաւորս։ ամենեքեան մք ընդ նոսա։ 5 * Պարսիկք՝ և Եթեօպացիք՝ Լիբէացիք՝ և Լիդացիք՝ ամենեքեան սաղաւարտեալք՝ և վահանաւորք։ 6 * Գոմեր՝ և ամենեքեան որք շուրջ զնովաւ. և տունն Թորգոմայ 'ի ծագաց հիւսիսոյ. և ամենեքին որք շուրջ են զնովաւ. և ազգք բազումք ընդ քեզ։ 7 * Պատրաստեա՛, պատրաստեա՛ զանձն քո՝ դու և ամ ժողովք որք ժողովեալ ընդ քեզ. և եղիցիս ինձ յառաջապահ։ 8 * Յետ աւուրց բազմաց պատրաստեսցի. և 'ի վախճան ժամանակաց եկեսցէ՝ և հասցէ յերկիրն ապահով 'ի սրոյ. ժողովեալ յազգաց բազմաց յերկիրն Իէլի՝ որ եղև աւերակ համօրէն. և նոյն յազգաց ժողովեալ՝ և բնակին խաղաղութբ ամենեքեան։ 9 * Եւ ելցես իբրև զանձրև. և հասցես իբրև զամպ. և ծածկեսցես զերկիրն. և եղիցիս դու՝ և ամ ազգք բազումք՝ որք շուրջ զքև իցեն ընդ քեզ։ 10 * Այսպէս ասէ Տր Տր. և եղիցի յաւուր յայնմիկ անկանիցին բանք 'ի սիրտ քո. և 11 խորհեսցիս խորհուրդս չարս։ * Եւ ասասցես, ելից 'ի վր ապահով երկրին. հասից 'ի վր հանդարտելոցն յանհոգութե. և բնակելոցն 'ի խաղաղութե, ամենեցուն որք բնակեալք են յերկրին. որոց ո՛չ պարիսպք՝ և ո՛չ նիգք՝ և 12 ո՛չ դրունք։ * Աւարել զաւար. կողոպտել զկապուտ նց. արկանել զձեռն իմ 'ի վր երկրին աւերելոյ՝ և բնակելոյ՝ 'ի վր ազգին ժողովելոյ յազգաց բազմաց. ստացելոյ ինչս՝ և դաստակերտս. բնակելոց 'ի սիրտ երկրի։ 13 * Սաբայ՝ և Դեդան. և վաճառականք կարքեդոնացւոց. և ամ աւանք նորա ասիցեն ցքեզ. առ յաւար արշաւեալ դաս՝ ժողովեցեր զժողովս քո, առնուլ զարծաթ և զոսկի. վարեալ 'ի դերութե

‖ Ստոր. 39. 1. Յայտ. 20. 8. — նոցա

թն զստացուածս. և կողոպտել զկապուտ մեծ: 14 *Վասն այնորիկ մարգարէա՛ց որդի մարդոյ՝ և ասասցես ցԳոգ. այսպէս ասէ Տր̄ Տր̄. ո՞չ ապաքէն յաւուր յայնմիկ՝ յորում բնակեսցի ժողովուրդ իմ Իէլ խաղաղութեամբ՝ զարթիցես: 15 *Եւ եկեսցես 'ի տեղւոջէ քումմէ 'ի ծագաց հիւսիսոյ. դու, և բազում ազգք ընդ քեզ. հեծեալք յերիվարս. ամենեքին ընդ գունդս բազումս զօրաց բազմաց: 16 *Եւ ելանիցես 'ի վերայ ժողովրդեան իմոյ Իէլի իբրև զամպ ծածկել զերկիրն: յետին ժամանակի եղիցի այն. և ածից զքեզ յերկիր իմ. զի ծանիցեն զիս ամ̄ ազգք. 'ի լինել իմ՛ սուրբ 'ի միջի քում առաջի նց̄՝ Գոգ: 17 *Այսպէս ասէ Տր̄ ցԳոգ. դու ես՝ վս̄ որոյ խօսեցայ յաւուրց յառաջնոց. 'ի ձեռն ծառայից իմոց մարգարէիցն Իէլի. յաւուրսն յայնոսիկ՝ և յամս՝ ածել զքեզ 'ի վր̄ նց̄: 18 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ յորում եկեսցէ Գոգ 'ի վր̄ երկրին Իէլի՝ ասէ Տէր Տր̄. ելցէ սրտմտութի իմ բարկութեամբ, 19 *Եւ նախանձն իմ. հրով բարկութե իմոյ խօսեցայ, եթէ ոչ՝ յաւուր յայնմիկ եղիցի շարժումն մեծ 'ի վր̄ երկրին Իէլի: 20 *‖Եւ խռովեսցին յերեսաց իմոց ձկունք ծովու, և թռչունք երկնից, և գազանք դաշտաց, և ամ̄ սողունք երկրի, և ամ̄ մարդիկ՝ որք 'ի վերայ երեսաց երկրի: լերինք պատառեսցին, և ձորք տապալեսցին, և ամ̄ պարիսպք երկրին կործանեսցին: 21 *Եւ կոչեցից զահ սրոյ 'ի վր̄ նորա ասէ Տր̄ Տր̄. սուր առն 'ի վր̄ եղբօր իւրոյ լինիցի: 22 *Եւ դատեցից զնա մահու՝ և արեամբ՝ և հեղեղօք անձրևաց՝ և վիմօք կարկտի. և հուր և ծծումբ տեղացից 'ի վր̄ նորա և 'ի վր̄ ամենեցուն որք ընդ նմա իցեն՝ և 'ի վերայ ազգաց բազմաց՝ որք ընդ նմա: 23 *Եւ մեծացայց՝ և սբ̄ եղէց՝ և փառաւորեցայց՝ և ծանուցայց առաջի ազգաց բազմաց. և ծանիցեն թէ ես եմ Տր̄:

Հ յամս՝ ածել

‖ Մատ. 24.27. Ղուկ. 21.25.

## ԳԼ: ԼԹ.

1 Եւ դու որդի մարդոյ, մարգարէա՛ց 'ի վր̄ Գոգայ՝ և ասասցես. այսպէս ասէ Տր̄ Տէր. ահաւասիկ ես 'ի վր̄ քո Գոգ՝ իշխան Ռովմեսոքայ՝ և Թոբելայ: 2 *Եւ ժողովեցից զքեզ. և հանից զքեզ 'ի ծագաց հիւսիսոյ. և ածից զքեզ 'ի վերայ լերանցն Իէլի: 3 *Եւ կորուսից զաղեղն քո 'ի ձախմէ ձեռանէ քումմէ. և զնետս քո յաջմէ ձեռանէ քումմէ՝ և կործանեցից զքեզ: 4 *'Ի վր̄ լերանցն Իէլի անկանիցիս դու՝ և ամենեքին որք զքև իցեն. և ազգքն որք ը̄ քեզ իցեն, մատնեսցին 'ի կերակուր հաւուց՝ և ամ̄ թռչնոց. և ամ̄ գազանաց անապատի ետու զքեզ 'ի կերակուր: 5 *Ընդ երեսս դաշտին անկցիս. 6 զի ես խօսեցայ՝ ասէ Տէր Տր̄: *Եւ առաքեցից հուր 'ի վերայ Մագոգայ: և բնակեսցին կղզիք 'ի խաղաղութե. և ծանիցեն, թէ ես եմ Տր̄: 7 *Եւ անուն իմ սբ̄ ծանիցի 'ի մէջ ժողովրդեան իմոյ Իէլի. և մի ևս պղծեսցի անուն իմ սբ̄. և ծանիցեն ամ̄ ազգք երկրի՝ թէ 8 ես եմ Տր̄ սբ̄ն Իէլի: *Ահաւասիկ հասեալ է՝ և ծանիցես, թէ լինիցի՝ ասէ Տր̄ Տէր. այս է օրն՝ զորմէ խօսեցայ: 9 *Եւ ելցեն բնակիչք քաղաքացն Իէլի. և այրեսցեն զզէնս, զնիզակաբեկս՝ զասպարաբեկս՝ զնետս՝ զբեկորս աղեղանց՝ զտիգաբուռնս՝ զսուսնախօթս՝ և այրեսցեն այրելիս իւրեանց եօթն ամ: 10 *Եւ մի առցեն փայտ 'ի վայրաց. և մի հատցեն փայտ յանտառաց. այլ զզէնս այրեսցեն 'ի կրակի. և առցեն յաւարի զաւարառուս իւրեանց. և կողոպտեսցեն զկողոպտիչս իւրեանց՝ ասէ Տէր 11 Տէր: *Եւ եղիցի յաւուր յայնմիկ. տաց Գոգայ տեղի անուանի գերեզման յԻէլի. զգերիմ եկելոցն 'ի կողմանց ծովուն. և շինեսցեն շուրջ զափամբք ձորոյն և թաղեսցեն զԳոգ անդ. և զամ̄ ժողովս նորա: և կոչեսցի գեհ գե12րեզմանն Գոգայ: *Եւ թաղեսցեն զնս̄ տունն Իէլի. զի սրբեսցի երկիրն 13 զեօթն ամիս: *Թաղեսցեն զնս̄ ամ̄ ժողովուրդ երկրին. և եղիցի նց̄ անուանի օրն, յորում փառաւորեցայց՝ 14 ասէ Տր̄: *Եւ արս նմին իրի դումարեսցեն երթալ շրջիլ ընդ երկիրն. և թաղել զմնացորդսն 'ի վերայ երեսաց երկրին. և սրբել զնա յետ եօթն ամ15սոյ: *Եւ խնդրեսցէ ամ̄՝ որ անցանիցէ ընդ երկիրն: և յորժամ տեսանիցէ ոսկր մարդոյ, շինեսցէ առ նովաւ նշանակ ինչ. մինչև թաղիցեն զայն՝ որք թաղենն 'ի գեհի Գոգայ: 16 *Զի և անուն քաղաքին գերեզման 17 կոչեսցի. և սրբեսցի երկիրն: *Եւ դու որդի մարդոյ՝ այսպէս ասէ Տէր Տր̄. ասա՛ ցամ̄ հաւս թռչունս՝ և ցամ̄ գազանս դաշտի. ժողովեցարո՛ւք, և եկա՛յք. ժողովեցարո՛ւք յամ̄ կողմանց երկրի 'ի զենումն իմ, զոր ես զենի ձեզ՝ զենումն մեծ 'ի վերայ լերանցն Իէլի. 18 կերա՛յք զմիս, և արբէ՛ք զարիւն: *Կերա՛յք զմիս հսկայից. և արբէ՛ք զարիւն իշխանաց երկրի. զխոյս՝ և զզուարակս՝ և զնոխազս: զի զուարակք պարա19րեալք են ամենեքեան: *Եւ կերիջիք

զճարպ

զճարպ յյագ. և արբջիք զարիւն յար բենալ. 'ի զենլեայ իմոյ՝ զոր զենի ձեզ։ 20 *Եւ յագեսջիք 'ի սեղանոյ իմմէ. 'ի հեծելոյ, և յերիվարաց, և 'ի սկայից. և յամ արանց պատերազմողաց՝ ասէ Տր Տր ։ 21 *Եւ տաց զփառս իմ 'ի ձեզ. և տեսցեն ամ ազգք զդատաստանն իմ, զոր արարի. և զձեռն իմ, զոր ածի 'ի վր նց ։ 22 *Եւ ծանիցեն տունն Իէլի, թէ ես եմ Տր Այ նց. յօրէ յայսմանէ, և առ յապայ ։ 23 *Եւ ծանիցեն ամ ազգք, եթէ վս մեղաց իւրեանց գերեցան տունն Իէլի. փոխանակ զի անարգեցին զիս, դարձուցի զերեսս իմ 'ի նոցանէ. և մատնեցի զնոսա 'ի ձեռս թշնամեաց իւրեանց. և անկան ամենեքին 'ի սուր ։ 24 *Ըստ պղծութե նց՝ և անօրէնութե նց՝ արարի նց զայն ։ և դարձաւ երեսք իմ 'ի նցնէ ։ 25 *Վս այսորիկ այսպէս ասէ Տր Տր. արդ՝ դարձուցից զգերութի յակոբայ. և ողորմեցայց տանն Իէլի. և նախանձեցայց վս անուան իմոյ սրբոյ ։ 26 *Եւ ընկալցին զանարգանս իւրեանց. և զանիրաւութին՝ զոր անիրաւեցան. 'ի բնակեցուցանել զնոսա յերկրին իւրեանց խաղաղութբ. և ոչոք իցէ, որ զարհուրեցուցանիցէ ։ 27 *'Ի դարձուցանել ինձ զնս յազգաց. և ժողովել զնոսա 'ի գաւառաց հեթանոսաց. և սրբ եղէց 'ի նոսա առաջի ազգաց ։ 28 *Եւ ծանիցեն թէ ես եմ Տր Այ նց. յերևիլ ինձ նց 'ի մէջ ազգացն. և ժողովեցից զնս յերկիրն իւրեանց. և ոչ ևս թողից 'ի նոցանէ ուրեք ։ 29 *Եւ ոչ ևս դարձուցից զերեսս իմ 'ի նոցանէ. փոխանակ հեղլոյ զսրտմտութի իմ 'ի վր տանն Իէլի. ասէ Տր Տր ։

Ալեր. 36. 33.

## Գլ ։ Խ ։

### Վսն Շինուածոյ Տաճարին ։

Եւ եղև 'ի քսաներորդի և հինգերորդի ամի գերութեն մերոյ. յամսեանն առաջնում. որ օր մետասան էր ամսոյն. 'ի չորեքտասաներորդի ամի առնլոյ քաղաքին ։ յաւուր յայն միկ եղև 'ի վր իմ ձեռն Տն ։ 2 *Եւ եած զիս 'ի տեսլեանն Այ յերկիրն Իէլի. և եդ զիս 'ի վր լերին միոյ բարձու յոյժ ։ և 'ի վր նորա իբրև զշինուած քաղաքի դէմ յանդիման ։ 3 *Եւ տարաւ զիս 'ի ներքս ։ և ահա այր մի. և տեսիլ նր էր իբրև զտեսիլ փայլուն պղնձոյ՝ և 'ի ձեռին նորա էր լար շինողաց. և ձող չափու. և ինքն կայր 'ի վերայ դրանն ։ 4 *Եւ ասէ ցիս այրն. տեսեր որդի մարդոյ. արդ՝ հայեաց աչօք քովք. և լուր ականջօք քովք. և հաստատեա 'ի միտ

քո

քում զամ՝ զոր ես ցուցից քեզ ։ զի վս ցուցանելոյ քեզ եկի այսր. և ցուցցես զամ, զոր դու տեսանես՝ տանն Իէլի ։ 5 *Եւ ահա շուրջ զտաճարաւն փողոց. և 'ի ձեռին առնն ձող չափու 'ի վեց կանգնոյ՝ և թզաւ ։ և չափեաց զլայնութի պարսպացն հաւասար ձողոյն. և զբարձրութի նր հաւասար ձողոյն ։ 6 *Եւ եմուտ ընդ դուռնն. որ հայէր ընդ արևելս՝ զեօթն աստիճանօք. և չափեաց զկողակոն վեցվեց կամարօք դրանն՝ հաւասար ձողոյն. և զլայնութի նորին հաւասար ձողոյն. և զերկայնութի կողակին հաւասար ձողոյն. և զլայնութի նորին հաւասար ձողոյն ։ և կամարս 'ի մէջ կողակացն 'ի վեցկանգնոյ ։ 7 *Եւ կողակն երկրորդ՝ հաւասար ձողոյն 'ի լայնութի, և հաւասար ձողոյն յերկայնութի. և կամարն 'ի հինգ կանգնոյ ։ 8 *Եւ կողակն երկրորդ հաւասար ձողոյն յերկայնութի. և հաւասար ձողոյն 'ի լայնութիւն. և կամար դրանն ։ 9 *Մերձ 'ի կոնք դրանն յութն կանգնոյ ։ և այլ կամարք յերկուց կանգնոց. և կամարք ներքին դրանն ։ 10 *Եւ կողակք դրանն՝ դէմ յանդիման միմեանց. երեք աստի՝ և երեք անտի. և չափ մի էր երեցունց. և չափ մի կամարացն՝ աստի և անտի ։ 11 *Եւ չափեաց զլայնութի մուտից դրանն 'ի տասն կանգնոյ. և զերկայնութի դրանն յերեքտասան կանգնոյ ։ 12 *Եւ 'ի մի կանգուն բովանդակեալ դէմ յանդիման կողակացն ։ 'ի մի կանգուն սահմանեալ յայս կոյս՝ յայն կոյս. 'ի կողակքն աստի անտի 'ի վեցվեց կանգնոյ ։ 13 *Եւ չափեաց զդուռնն 'ի պարսպէ կողակին մինչև յորմ կողակին 'ի լայնութի քսան և հինգ կանգուն. և այն դուռնն էր 'ի դրան վերայ ։ 14 *Եւ զմիջոց կամարին դրանն. և զկողակս նորին 'ի վաթսուն կանգնոյ շուրջ զդրամբն. և զմիջոց սրահին արտաքնոյ ։ 15 *Եւ զմիջոց կամարի դրանն ներքոյ 'ի յիսուն կանգնոյ ։ 16 *Եւ պատուհանք ծածուկք էին 'ի կողակսն. 'ի կամարսն 'ի ներքուստ դրան սրահին շուրջ շրջանակաւ ։ նոյնպէս և կամարացն. և պատուհանք շուրջ ներքոյ և արտաքոյ. և 'ի վերայ կամարացն արմաւենիք աստի և անտի. 17 և տարաւ զիս 'ի ներքին սրահն ։ *Եւ ահա գահոյլիճք. և սիւնք շրջանակօք. շուրջ զսրահիւքն յօրինեալք ։ երեսուն գահոյլիճք 'ի մէջ սեանցն շրջանակաց ։ 18 *Եւ սիւնք դէմ յանդիման դրանցն 19 ըստ երկայնութե դրանցն ։ *Եւ սիւնք շրջանակաւ 'ի ներքոյ ։ և չափեաց զլայնութի սրահին 'ի միջոցէ դրանն ար-



տաք-

տաքնոյ, մինչեւ ցմիջոյ դրանն ներքնոյ . որ հայէր ընդ արեւելս . հարիւր կանգուն : 20 * Եւ տարաւ զիս 'ի կողմն հիւսիսոյ . եւ ահա դուռն մի . որ հայէր ը̃ հիւսիսի՝ սրահին արտաքնոյ . եւ չափեաց զնա յերկայնութի՝ եւ 'ի լայնութի : 21 * Եւ զկողակս նորա աստի անտի . եւ զկամարն՝ եւ զկոնքն՝ եւ զարմաւենիս . եւ եղեւ ըստ չափոց դրանն, որ հայէր յարեւելս . յիսուն կանգուն յերկայնութի . եւ քսան եւ հինգ կանգուն 'ի լայնութի : 22 * Եւ պատուհանք նորա՝ եւ կամարք . եւ արմաւենիք ըստ դրանն . որ հայէր ընդ արեւելս : եւ ընդ եօթն սանդուխս ելանէին 'ի նա . եւ էր կամարս պատ 'ի ներքոյ : 23 * Եւ դուռն ներքին սրահին հայէր 'ի դուռն հիւսիսոյ . ը̃ օրինակի դրանն՝ որ հայէր ը̃ արեւելս . եւ չափեաց զսրահն դրանէ 'ի դուռն՝ հարիւր կանգուն : 24 * Եւ տարաւ զիս 'ի կողմն հարաւոյ . եւ ահա դուռն մի՝ որ հայէր ընդ հարաւ . եւ չափեաց զնա՝ եւ զկողակս նորա . եւ զկոնքս՝ եւ զկամարս ըստ նմին չափու : 25 * Եւ պատուհանք նորա . եւ կամարք շուրջանակաւ . ըստ օրինակի պատուհանիցն եւ կամարացն առաջնոյ . յիսուն կանգուն երկայնութի . եւ քսան եւ հինգ կանգուն լայնութի : 26 * Եւ եօթն սանդուխք 'ի նմա . եւ կամարք 'ի ներքս . եւ արմաւենիք աստի անտի 'ի վերայ կոնքացն : 27 * Եւ դուռն ներքոյ հանդէպ սրահին՝ որ հայէր ը̃ հարաւ : եւ չափեաց զսրահ դրանն՝ եւ զդուռնն . 'ի լայնութի՝ հարիւր կանգուն 'ի կողմն հարաւոյ : 28 * Եւ տարաւ զիս 'ի սրահն ներքին դրանն . որ ընդ կողմն հարաւոյ . եւ չափեաց զդուռնն՝ որ ընդ հարաւ ըստ նմին չափու : 29 * Եւ զկողակսն . եւ զկամարսն նոյնին չափու, եւ զկոնքսն . եւ պատուհանք նորա՝ եւ կամարք շուրջ շրջանակի . յիսուն կանգուն յերկայնութի . եւ քսան եւ հինգ կանգուն 'ի լայնութի : 30 * Եւ շուրջ զնովաւ կամարք . քսան եւ հինգ կանգուն 'ի լայնութի . եւ յիսուն կանգուն յերկայնութի : 31 * Եւ կամարք յարտաքնում սրահին : եւ արմաւենիք 'ի կամարսն . եւ եօթն սանդուխք ելանելիք նորա : 32 * Եւ տարաւ զիս 'ի դուռն՝ որ հայէր ընդ ճանապարհն արեւելից . եւ չափեաց զնա ըստ առաջնոյ չափուն : 33 * Զկողակսն՝ եւ զկամարս՝ եւ զկոնքսն՝ ըստ նմին չափու . եւ պատուհանք 'ի նմա . եւ կամարք շուրջանակի . յիսուն կանգուն յերկայնութի . քսան եւ հինգ 'ի լայնութի : 34 * Եւ կամարք 'ի ներքնում սրահին . եւ արմաւենիք 'ի վ̃ կամարացն աստի անտի . եւ եօթն սանդուխք 'ի նմա : 35 * Եւ տարաւ զիս 'ի դուռնն՝ որ հիւսիսի . չափեաց ը̃ նմին չափու : 36 * Զկողակսն եւ զկամարս՝ եւ զկոնքս . եւ պատուհանք 'ի նմա շուրջանակի . եւ կամարք . յիսուն կանգուն յերկայնութի . եւ քսան եւ հինգ 'ի լայնութի : 37 * Եւ կամարք արտաքնոյ դրանն . եւ արմաւենիք կամարացն աստի անտի . եւ ութն սանդուխք 'ի նմա : 38 * Եւ դահլիճք նր՝ եւ լայնութի նր՝ եւ կամարք նորա հանդէպ երկրորդ դրանն՝ ուր լուանային զողջակէզսն : 39 * Եւ 'ի կամար դրանն երկու սեղանք յայսկոյս . եւ երկու սեղանք յայնկոյս . զի զենուցուն 'ի նոսա զողջակէզսն՝ եւ զվ̃ մեղացն՝ եւ զվասն անգիտութեն : 40 * Եւ ընդ հարաւակողմն խողովակի ողջակիզացն 'ի մուտ դրանն . որ հայէր հիւսիսի . երկու սեղանք ընդ արեւելս . եւ 'ի հարաւակողմն կուսէ երկրորդ ի հանդէպ դրանն . կամարաց դրանն երկու սեղանք . եւ ընդ արեւելս ութն սեղանք : 41 * Չորք սեղանք յայս կոյս . եւ չորք սեղանք յայնկոյս հանդէպ հարաւոյ դրանն : եւ անդ զենուցուն զզոհսն՝ եւ զողջակէզս յանդիման ութից սեղանոյ ողջակիզացն : 42 * Եւ չորք սեղանք ողջակիզացն քարեղէնք կոփածոյք . կանգնաւ եւ կիսաւ երկայնութի . եւ կանգնաւ եւ կիսաւ լայնութի . եւ կանգնաւ եւ կիսաւ բարձրութի . զի 'ի վ̃ նորա դնիցեն զգործին՝ որով զենուցուն անդ զողջակէզսն եւ զզոհս : 43 * Եւ ծնօտս ունկեանսքանդակագործս ունիցին 'ի ներքուստ շուրջանակի . եւ 'ի վերայ սեղանոցն յարկաւ 'ի ծածկել յանձրեւոյ եւ յերաշտութէ : 44 * Եւ տարաւ զիս 'ի սրահն ներքին . եւ ահա երկու պաշտկամք 'ի ներքոյ սրահին . մի ընդ հարաւոյ դրանն, որ հայէր ընդ հիւսիսի, եւ հանէր ընդ հարաւ . եւ միւս ընդ հիւսիսոյ դրանն, որ հայէր ընդ հարաւ, եւ հանէր ընդ հիւսիսի : 45 * Եւ ասէ ցիս՝ այս պաշտկամք, որ հայի ընդ կողմն հարաւոյ՝ քահանայիցն եղիցի՝ որք պահեն զպահպանութիս տանն : 46 * Եւ պաշտկամքն՝ որ հայի ընդ հիւսիսի՝ քահանայիցն եղիցի, որք պահեն զպահպանութի սեղանոյն . նոքա են որդիք սադովկայ՝ որք մերձենան 'ի ղեւտացւոց անտի պաշտել զՏր : 47 * Եւ չափեաց զսրահն յերկայնութի հարիւր կանգուն . եւ 'ի լայնութի հարիւր կանգուն . զչորեսին կողմանս նր . եւ սեղանն յանդիման տաճարին : 48 * Եւ տարաւ զիս 'ի կոնք տաճարին . եւ չափեաց զլայնութի կոնքին 'ի միջէ կողմանէ հինգ կանգուն .

գուն. և 'ի միւսմէ կողմանէ հինգ կանգուն. և զլայնութի մտին՝ չորեքտասան կանգուն. և զխոյակս ուսոյ դրան կոնքին յայսկոյս յայնկոյս՝ երիս երիս կանգունս: 49 *Եւ զբարձրութի կոնքին քսան կանգուն. և զլայնութի նորին մետասան կանգուն. և ընդ տասն աստիճանս ելանէին 'ի նա. և սիւնք երկու էին աստի անտի:

## Գլ: ԽԱ:

1 Եւ տարաւ զիս 'ի տաճարն՝ զորոյ չափեաց զկամարն վեց կանգուն 'ի լայնութի 'ի միոջէ կողմանէ. և վեց կանգուն զերկայնութի կամարին 'ի միւսմէ կողմանէ: 2 *Եւ զլայնութիւն դրանն տասն կանգուն. և զխոյակս կոճոյ դրանն. յայսկոյս և յայնկոյս հինգ-հինգ կանգուն. և չափեաց զերկայնութի նր քառասուն կանգուն. և զլայնութի նր քսան կանգուն: 3 *Եւ եմուտ 'ի ներքս 'ի սրահն՝ և չափեաց զկամար մտին երկոսս կանգունս. և զմուտն վեց կանգուն. և զխոյակս մտից կոճոցն յայսկոյս յայնկոյս եօթն եօթն կանգուն: 4 *Եւ չափեաց զերկայնութի դրանն՝ քսան կանգուն. և զլայնութին քսան կանգուն՝ առաջի տաճարին. և ասէ ցիս, այսէ սրբութի սրբութեց: 5 *Եւ չափեաց զորմս տաճարին 'ի վեց կանգնոյ. և զլայնութի կողման տանն 'ի չորից կանգնոց շուրջ շրջանակաւ: 6 *Եւ 'ի կողմանէ 'ի կողմն երեսուն և երիս կանգունս կրկին. և անջրպետ 'ի մէջ որմոց տաճարին, շրջանակի շուրջ զկողմամբքն. զի լինիցի այնոցիկ՝ որք անկանիցին զնոքօք՝ հայիլ. և ամենևին մի մերձենայցեն յորմն տաճարին: 7 *Եւ զլայնութի կողմանց վերին դրանն. ըստ առանցից կողմանց յորմոցն առ 'ի վերին կողմն շուրջ զտամբն. զի արձակութի լինիցի տանն 'ի վերուստ և 'ի ներքուստ. որոց ելանիցեն 'ի վերնայարկսն. և 'ի միջնայարկայն յերկրորդ յարկսն: 8 *Եւ ձեղուն տանն բարձրութի շուրջ շրջանակաւ զանջրպետօք կողմանցն հաւասար ձողոյն. 'ի վեց կանգնոյ անջրպետ մի: 9 *Եւ լայնութի որմոյ արտաքին կողմանն 'ի հինգ կանգնոյ. և առանցք 'ի մէջ կողմանց տանն: 10 *Եւ 'ի մէջ պաշտկամբացն 'ի լայնութի քսան կանգուն. և շրջանակաւ շրջանակք տանն: 11 *Եւ դուրք պաշտկամբացն յառանցս դրան միոյ՝ որ ընդ հիւսիսի. և դուռն մի ընդ հարաւ. և լայնութիւն տեղւոյն ընդարձակութե վասն լուսոյ յառանցիցն. հինգ կանգուն 'ի լայ-

12 նութի շուրջանակի: *Եւ անջրպետ ընդդէմ առանցիցն 'ի ծովակողմն ճանապարհին. յերկայնութի եօթանասուն կանգուն. և լայնութիւն որմոյն անջրպետ 'ի հինգ կանգուն. և երկայնութի նորին իննսուն կանգուն:

13 *Եւ չափեաց առաջի տանն յերկայնութի հարիւր կանգուն. և խորշքն և անջրպետք. և որմք նց յերկայնութի 14 հարիւր կանգուն*Եւ լայնութի առաջի տանն. և խորշքն յանդիման նորին՝ 15 հարիւր կանգուն: *Եւ չափեաց զեր կայնութի անջրպետին ընդդէմ խորշիցն 'ի թիկանց տանն. զխորշն աստի հարիւր կանգուն յերկայնութին. և տաճարն արտաքին՝ և անկիւնքն՝ և 16 կամարքն: *Եւ յարկքն՝ և պատուհանքն վանդակապատք լուսանցոյցք. շուրջ զերեքումբք՝ վասն հայելոյ. և տունն՝ և որ զնովաւ յատակքն առհասարակ շուրջ շրջանակաւ տախտակամած 'ի յատակացն մինչև 'ի պատուհանսն. և պատուհանքն բացեալք ե- 17 րեքկին առ 'ի հայիլ: *Արդէս և 'ի ներքոյ կողմանն մինչև ցարտաքին. և 'ի վր ամ տանն շուրջ շրջանակաւ. և 'ի վերայ ամ տանն շուրջանակի 'ի ներ- 18 քոյ և արտաքոյ: *Քերոբէ քանդակեալ՝ և արմաւենիք. և արմաւենի մի 'ի մէջ քերոբէից. և երկու քերոբէք հանդէպ միմեանց միոյ քերոբէին: 19 *Դէմք մարդոյ՝ 'ի միոջէ կողմանէ արմաւենւոյն. և դէմք առիւծու 'ի միւսմէ կողմանէ արմաւենւոյն. և այսպէս քանդակեալ էր ամ տաճարն շուր- 20 ջանակի: *Յատակացն մինչև ցյարկսն քերոբէք և արմաւենիք քանդակեալք: և սրբութին՝ և տաճարն՝ (թռուցեալ:) 21 *Եւ մուտ բացեալ չորեքկուսի. և դէմ յանդիման սրբութեցն տեսիլ: 22 *Իբրև փայտեղէն սեղանոյ՝ երեք կանգուն 'ի բարձրութի. և երկու կանգուն յերկայնութի. և երկու կանգուն 'ի լայնութի և եղջիւրք 'ի նմա. և յատակն նր՝ և որմք փայտեղէնք. և ասէ 23 ցիս. այս սեղանէ երեսաց Տն: *Եւ երկու մուտք տաճարին. և երկու մուտք սրբութեցն. և երկոցունց շրջանակաւ 24 մտիցն: *Եւ երկու մուտք միոյ. և երկու 25 մուտք միւսոյ դրանն: *Եւ քանդակագործք 'ի վր նց. և 'ի վր մտից տաճարին քրոբէք. և արմաւենիք քանդակեալ ըստ քանդակի սրբութեցն. և փայտակերտ աղնիւ դէմ յանդիման 26 կամարին յարտաքուստ կողմանէ: *Եւ պատուհանք ծածուկք. և չափեաց յայսկոյս յայնկոյս զյարկս կամարին. և զկողմանս տանն խառնել ընդ միմեանս:

## Գլ ։ ԽԲ ։

1 Եւ եհան զիս 'ի սրահն արտաքին է̄ արեւելս. դէմ յանդիման դրանն հիւսիսոյ. եւ տարաւ զիս 'ի ներքս. եւ ահա պաշտկամք հինգ առանցիւքն եւ խորշիւքն ընդ կողմն հիւսիսոյ։ 2 *Հարիւր կանգուն յերկայնութիւն. եւ յիսուն կանգուն 'ի լայնութիւն։ 3 *Կարեալք է̄ օրինակի դրան սրահին ներքնոյ. եւ է̄ օրինակի շրջանակաւ սեանց սրահին արտաքնոյ. դէմ ընդդէմ կարգեալ երեքսրահեան։ 4 *Եւ ընդդէմ պաշտկամացն գնացի տասն կանգնոյ 'ի լայնութիւն, եւ հարիւր կանգուն յերկայնութիւն. եւ ներքսագոյն կողմն ճանապարհին կանգուն մի. եւ դրունք նոցա ընդ հիւսիսի։ 5 *Եւ գնացքն 'ի վերնատունսն նոյնպէս՝ զի խառնեալ էին սիւնքն շրջանակաւ 'ի ներքուստ մինչեւ 'ի վեր, եւ անջրպետ. նոյնպէս սիւնքն շրջանակօք, եւ անջրպետք՝ եւ մոյթք։ 6 *Զանզի երեքսրահեան էին. եւ սիւնք ոչ գոյին իբրեւ զսիւնս պաշտկամացն. վ̄ա այնորիկ առանցքն էին 'ի ներքնոյ կողմանէ. եւ 'ի միջնայարկայն 'ի գետնոյ կողմանէ յիսուն։ 7 *Եւ լոյս արտաքուստ ա̄մ պաշտկամս սրահին արտաքնոյ՝ որք հայէին դէմ յանդիման պաշտկամացն՝ որք է̄ հիւսիսի՝ յերկայնութիւն յիսուն կանգուն։ 8 *Զանզի երկայնութիւն պաշտկամացն որք հայէին 'ի սրահն արտաքին՝ երյիսուն կանգուն. եւ նոքա էին դէմ յանդիման միմեանց. է̄ ա̄մ հարիւր կանգուն։ 9 *Եւ դրունք պաշտկամացն որք արեւելից՝ վ̄ա մտանելոյ ընդ նոսա յարտաքին սրահէ անտի։ 10 *Ըստ լուսամտի առաջին գնացին. եւ որ ընդ կողմն հարաւոյ՝ դէմ յանդիման հարաւոյ՝ եւ ընդդէմ անջրպետացն. եւ հանդէպ խորշիցն. եւ պաշտկամքն։ 11 *Եւ գնացք հանդէպ նց̄. ըստ չափու պաշտկամացն ճանապարհին որ ընդ հիւսիսի՝ եւ ըստ երկայնութեան նց̄՝ եւ է̄ լայնութեան նոցին՝ եւ ըստ ելիցն նոցա. եւ ըստ շրջանակաց նց̄. եւ ըստ լուսանցուցաց։ 12 *Եւ ըստ մտից պաշտկամացն՝ որ ընդ հիւսիսի։ եւ ըստ մտից առաջին գնացին առ 'ի զլոյսն տալոյ անջրպետութեան ձողոյն. եւ հանդէպ արեւելից գնալ ընդ նոսա։ 13 *Եւ ասէ ցիս. պաշտկամքդ որք՝ հիւսիսի. եւ պաշտկամքդ որք ընդ հարաւոյ են. հանդէպ բացատացն՝ դոքա են պաշտկամք սրբութեան. ուր ուտեն քահանայք (որդիքն սադուկայ) մերձաւորք Տ̄ն զսրբութիւն սրբութեանց. եւ անդ դիցեն զսրբութիւն սրբութեանց՝ եւ զզոհսն՝ եւ զվասն մեղացն՝ եւ զվասն անգիտութեան. քանզի տ̄ր է տեղին։ 14 *Եւ մի ոք մտանիցէ անդր. բայց 'ի քահանայիցն. եւ ոչ ելանիցեն 'ի սրբութենէ անտի 'ի սրահն արտաքին. զի յա̄մ ժամանակի՝ որք մերձենանն՝ սուրբ կացցեն. եւ մի մտցեն 'ի պատմուճանս իւրեանց՝ որովք պաշտեցինն. քանզի տ̄ր է այն. եւ զգեցցին զայլ հանդերձ. յորժամ մերձենայցեն 'ի ժողովուրդն։ 15 *Եւ կատարեցաւ չափ տաճարին ներքնոյ. եւ եհան զիս ընդ ճանապարհ դրանն՝ որ հայէր ընդ արեւելս. եւ չափեաց զձեւ տանն շուրջանակի՝ ըստ յօրինուածոյ։ 16 *Եւ եկն՝ եկաց առ հարաւային դրանն՝ որ հայէր ընդ արեւելս. եւ չափեաց հինգ հարիւր չափով ձողոյն. եւ դարձաւ 'ի 17 կողմն հիւսիսոյ։ *Եւ չափեաց հանդէպ հիւսիսոյ հինգ հարիւր կանգնոյ չափով ձողոյն։ 18 *Եւ դարձաւ է̄ ծովակողմն. եւ չափեաց հանդէպ ծովուն հինգ հարիւր չափով ձողոյն։ 19 *Եւ դարձաւ 'ի կողմն հարաւոյ. եւ չափեաց հանդէպ հարաւոյ հինգ հարիւր չափով ձողոյն։ 20 *Եւ զփողոցս նր̄ շուրջանակի. հինգ հարիւր կանգնոյ հանդէպ արեւելից. եւ 'ի հինգ հարիւր կանգնոյ զլայնութիւն անջրպետեալ 'ի մէջ սրբութեանց՝ եւ 'ի մէջ պարսպացն յօրինուած տաճարին։

## Գլ ։ ԽԳ ։

1 Եւ եհած զիս 'ի դուռնն՝ որ հայէր ընդ արեւելս՝ եւ եհան զիս է̄ այն։ 2 *Եւ ահա փառքն Ա̄յ Իս̄լի գային ընդ ճանապարհն արեւելից. եւ ձայն բանակին, իբրեւ զձայն կրկնելոյ բազմաց. եւ երկիրն լուսաւորեցաւ 'ի նմանութիւն լուսաւորաց 'ի փառացն շուրջանակի։ 3 *Եւ տեսիլն, զոր տեսանէի, էր ըստ տեսլեանն՝ զոր տեսանէի 'ի ժամանակի իբրեւ մտանէի օծանել զքաղաքն եւ տեսիլ կառացն՝ զոր տեսի. էր ըստ տեսլեանն. զոր տեսի 'ի վ̄ր քոբար գետոյ. եւ անկայ 'ի վ̄ր երեսաց իմոց։ 4 *Եւ փառքն Տ̄ն մտին 'ի տաճարն է̄ ճանապարհն. որ հայէր ընդ արեւելս։ 5 *Եւ համբարձ զիս հոգի. եւ տարաւ զիս 'ի սրահն ներքին. եւ ահա լի էր փառօքն Տ̄ն տաճարն. եւ կայի անդ։ 6 *Եւ ահա ձայն 'ի տաճարէ անտի՝ որ խօսէր ընդ իս. եւ այր մի կայր մօտ առ իս։ 7 *Եւ ասէ ցիս. որդի մարդոյ՝ տես զտեղի աթոռոյ իմոյ. եւ զտեղի հետոց ոտից իմոց. որովք բնակեսցի անուն իմ 'ի մէջ տանն Իս̄լի յաւիտեան. եւ մի եւս պղծեսցեն տունն Իս̄լի զանուն իմ սուրբ.

որ է գան յանուէ

որ է գան յանուէ

սուրբ. ինքեանք և առաջնորդք իւր_
եանց պոռնկութ՟բ իւրեանց. և ապա
կանութ՟բք իշխանացն՝ որք 'ի մէջ ն՟ց:
8 *Եդնել զդրանդս իմ 'ի մէջ դրան_
դից նոցա. և զսեամս իմ առ սեամն
ն՟ց. և արկին զպարիսպս իմ նեղել ը՟ն՟դ
իս և ընդ նոսա. և պղծեցին զանուն
իմ սուրբ անօրէնութ՟բք իւրեանց, զոր
առնէին. և խորտակեցի զնոսա բար_
կութ՟բ իմով և սպանմամբ: 9 *Գոնեայ
արդ մերժեսցեն զպոռնկութիւնս իւր_
եանց. և զապականութիւնս իշխանաց ն՟ց
յինէն. և բնակեցից 'ի միջի ն՟ց յաւի
տեան: 10 *Եւ դու որդի մարդոյ՝ ցոյց
տանն Ի՟լի զտաճարդ. և դադարեսցեն
'ի մեղաց իւրեանց՝ զտեսիլ դորա՝ և
զձև՝ և զյօրինուածս: 11 *Եւ նոքա ըն_
կալցին զտանջանս իւրեանց վ՟ն ամ՟.
զոր արարին. և նկարեսցես զտունն և
զպատրաստութիւնն իւր. և զել և զմուտ
դորա. և զկաց և զամ՟ հրամանս դո_
րա. և զամ՟ օրէնս և զիրաւունս դորա
ցուցցես դոցա. և գրեսցես առաջի
նոցա. և պահեսցեն զամ՟ իրաւունս
և զհրամանս իմ. և արասցեն զնոսա:
12 *Եւ զնկարագիր տանն 'ի վ՟ր գլխոյ
լերինն. և զամ՟ սահմանս ն՟ր շուրջա_
նակի, սրբութ՟ի սրբութեց են: այս
օրէն տաճարին: 13 *Եւ այս չափք սեղա
նոյն: կանգուն մի 'ի կանգնոյ. և կան
գուն մի, և ուղղ գոգած խորութեն ն՟ր.
և կանգուն մի լայնութ՟ի. և պսակ շուրջ
զծնօտիւքն նորա շուրջանակի թզաւ
մի: և այս բարձրութ՟ի սեղանոյն:
14 *Ի խորութ՟է սկզբան փորուածոյն
մինչև 'ի մեծ քաւութիւն. կանգունք
երկու 'ի ներքուստ. և լայնութիւն կան
գուն մի. և 'ի փոքր քաւութենն մինչև
'ի մեծ քաւութիւն՝ կանգունք չորք. և
'ի լայնութ՟ի կանգուն մի: 15 *Եւ բունն
'ի չորից կանգնոց. և 'ի բնէն և 'ի վեր
եղջերոյն՝ կանգուն մի: 16 *Եւ բուն
յերկոտասան կանգնոյ. առ երկոտա_
սան կանգուն 'ի լայնութ՟ի. չորեքկու_
սի 'ի չորեսին կողմանս իւր: 17 *Եւ քաւ
ութ՟ի չորեքտասան կանգուն յերկայ_
նութ՟ի. և չորեքտասան կանգուն 'ի
կողմանց լայնութ՟ի՝ հաստարակ 'ի չորե
ցունց. և ծնօտքն պատուածոյք շուր_
ջանակի պատեալ զնովաւ՝ ի կէս կանգ
նոյ. և բոլորակ ն՟ր շուրջանակի կան_
գուն մի. և աստիճանք ն՟ր ընդ արևելս:
18 *Եւ ասէ ցիս Տ՟ր. որդի մարդոյ՝ այս
պէս ասէ Տ՟ր Տ՟ր. այս հրամանք են սե_
ղանոյն յաւուր գործուածոց իւրոյ
մատուցանել 'ի վ՟ր նորա ողջակէզս.
և հեղուլ առ նովաւ զարիւն: 19 *Եւ
տացես քահանայիցն ղևտացւոց՝ որք
'ի զաւակէ սադովկայ մերձեսցին առ
իս՝ ասէ Տ՟ր Տ՟ր՝ պաշտել զիս. զուա_
20 րակ մի յանդոյ վասն մեղաց: *Եւ
առցեն յարենէ նորա. և դիցեն 'ի վ՟ր
չորեցունց եղջերաց սեղանոյն. և 'ի վ՟ր
չորեցունց անկեանց քաւութեն. և շուրջ
զյարկաւն ցանեսցեն՝ և քաւեսցեն:
21 *Եւ առցեն զզուարակն զվ՟ն մեղացն.
և այրեսցի 'ի զատեալ տեղւոջ տաճա
22 րին՝ արտաքոյ սրբութեց: *Եւ յաւ_
ուրն երկրորդի առցեն նոխազս եր_
կուս յայծեաց անարատս՝ վ՟ն մեղաց.
և քաւեսցեն զսեղանն՝ որպ՟ քաւեցին
23 զուարակաւն: *Եւ յետ վախճանելոյ
զքաւութիւնն, մատուսցեն զզուարակ
յարջառոց անարատ՝ և խոյ 'ի հօտից
24 անարատ: *Եւ մատուսցեն առաջի
Տ՟ն. և ցանեսցեն 'ի վ՟ր ն՟ց քահանայքն
աղ. և հանցեն զն՟ս ողջակէզս Տ՟ն:
25 *Եօթն օր արասցեն՝ զնոխազ մի վ՟ն
մեղաց հանապազ. և զզուարակ մի
յարջառոց. և զխոյ մի անարատ 'ի հօ_
26 տից արասցեն: *Եօթն օր քաւես_
ցեն զսեղանն՝ և սրբեսցեն զնա. և կա
27 տարեսցեն զձեռս իւրեանց: *Եւ վախ
ճանեսցեն զաւուրսն. և եղիցի յօրէն
ութներորդի և անդր՝ արասցեն քա_
հանայքն 'ի վերայ սեղանոյն զողջա_
կէզս ձեր՝ և զվասն փրկութեն ձերոյ.
և ընկալայց զձեզ՝ ասէ Տ՟ր Տ՟ր:

## ԳԼ: ԽԴ:

1 Եւ դարձոյց զիս ընդ ճանապարհ
արտաքին դրանն սրբութեցն՝ որ
հայէր ընդ արևելս. և այն էր փակեալ:
2 *Եւ ասէ ցիս Տ՟ր. այդ դուռն փա_
կեալ կացցէ՝ և մի բացցի՝ և մի ոք անց
ցէ ընդ դա. զի Տ՟ր Ա՟ծ Ի՟լի մտցէ ընդ
3 դա. և եղիցի փակեալ: *Բանզի ա_
ռաջնորդն իշխան նա նստցի 'ի դմա ու_
տել զհաց առաջի Տ՟ն. ը՟ն՟դ ճանապարհ
կամարի դրան մտցէ. և ընդ նոյն ճա_
4 նապարհ ելցէ: *Եւ տարաւ զիս ընդ
ճանապարհ դրանն՝ որ ընդ հիւսիսի
յանդիման տաճարին. տեսանէի, և
ահա փառօք Տ՟ն լի էր տունն Տ՟ն. և
5 անկայ 'ի վ՟ր երեսաց իմոց: *Եւ ասէ
ցիս Տ՟ր. որդի մարդոյ, դի՛ր 'ի սրտի
քում, և տես աչօք քովք. և լո՛ւր ական
ջովք քովք զամ՟ ինչ՝ զոր ես ընդ քեզ
խօսեցայց. ըստ ամ՟ հրամանաց տանն
Ի՟լի. և ըստ ամ՟ իրաւանց դորա. և
կարգեսցես 'ի սրտի քում զմուտ տանդ.
ըստ ամ՟ ելից նորա. և ըստ ամ՟ սրբու
6 թեց: *Եւ ասասցես ցտունն Ի՟լի.
տուն դառնացողաց՝ այսպէս ասէ Տ՟ր.
շատ լիցի ձեզ առ ամ՟ անօրէնութ՟բք
7 ձերովք տունդ Իսրայէլի: *Մուծա_
նել

նել ձեզ որդիս այլազգիս անթլփատս սրտիւք՝ և անթլփատս մարմնով՝ լինել 'ի սրբութիւն իմ, և պղծել զնոսա. 'ի մատուցանել ձեզ զհացդ իմ՝ ճարպով և արեամբ. և անցանել զուխտիւ իմով ամենայն անօրէնութեամբք ձերովք։ 8 *Եւ ոչ պահեցէք զպահպանութիւնս սրբութեանց իմոց. և կարգեցիք զնոսա պահել զպահպանութիւնս սրբութեան սրբութեանց իմոց։ 9 *Այս այսպէս ասէ Տր Տր. ամ որդի օտարածին անթլփատ սրտիւ, և անթլփատ մարմնով՝ մի՛ մտցէ 'ի սրբութիւն իմ. յամ այլազգեաց որդւոց՝ որք իցեն 'ի տանդ իղի։ 10 *Այլ ղևտացիքն՝ որք հեռացան յինէն 'ի մոլորիլ ժողովրդեանն. որք մոլորեցան յինէն զհետ խորհրդոց իւրեանց. և ընկալցին ըստ անօրէնութեան իւրեանց։ 11 *Եւ եղիցին 'ի սրբութիւն իմ պաշտօնեայք. բարապանք դրանց տանդ. և սպասաւորք տաճարիդ. նոքա զենուցուն զողջակէզս՝ և զզոհս ժողովրդեանն. և նոքա կացցեն առաջի ժողովրդեանն լինել նց 'ի սպասաւորս։ 12 *Փոխանակ զի էին նոքա սպասաւորք առաջի կռոց նց. և եղև տանն իղի այն 'ի տանջանս անիրաւութեան. վասն այնորիկ ամբարձի զձեռն իմ 'ի վերայ նոցա՝ ասէ Տր Տր. և ընկալցին ըստ անիրաւութեան իւրց։ 13 *Եւ մի՛ մերձեսցին առ 'ի քահանայանալ ինձ. և մի՛ հպիլ յամ սրբութիւնս որդւոցն իղի. և մի՛ յամ սրբութիւն սրբութեանցն իմոց. և ընկալցին զանարգանս իւրեանց՝ մոլորութեամբն զոր մոլորեցան։ 14 *Եւ կարգեսցեն զնոսա պահել զպահպանութիւնս տանն. յամենայնի գործս նորա. և յամ ինչ զոր գործիցէ անդ։ 15 *Քահանայքն ղևտացիք որդիքն սադովկայ, որք պահեցին զպահպանութիւն սրբութեանց իմոց. 'ի մոլորիլ տանն իղի յինէն. նոքա մերձեսցին առ իս պաշտել զիս. և կացցեն առաջի երեսաց իմոց. մատուցանել ինձ զոհս և զճարպ՝ և զարիւն՝ ասէ Տր Տր։ 16 *Նոքա մտցեն 'ի սրբութիւն իմ. և նք մերձեսցին 'ի սեղան իմ պաշտել զիս. և պահեսցեն զպահպանութիւնս։ 17 *Եւ եղիցի 'ի մտանել նց ընդ դրունս սրահին 'ներքնոյ՝ զգեցցին զպատմուճանս կտաւիս. և մի՛ զգենուցուն ասրիս 'ի պաշտաման իւրեանց 'ի դրանէ սրահին ներքնոյ։ 18 *Եւ խոյրս կտաւիս ունիցին 'ի գլուխս իւրեանց. և անդրավարտիս կտաւիս յերանս իւրեանց. և ոչ զգենուցուն 'ի բռնութեան։ 19 *Եւ յելանելն իւրեանց յարտաքին սրահն առ ժողովուրդն՝ մերկասցեն զպատմուճանս իւրեանց՝ որով պաշտիցեն. և դիցեն զնոսա 'ի սենեակս սրբութեանն, և զգեցցին այլ պատմուճանս. և մի՛ սրբեսցեն զժողովուրդն պատմուճանօք իւրեանց։ 20 *Եւ զգլուխս իւրեանց մի՛ գերծցեն. և զվարսս իւրեանց մի՛ անսուրացուսցեն. ծածկելով ծածկեսցեն զգլուխս իւրեանց։ 21 *Եւ զգինի մի՛ արբցեն ամ քահանայքն 'ի մտանելն իւրեանց 'ի ներքին սրահն։ 22 *Եւ զայրի, և զհանեալ մի՛ առնուցուն իւրեանց կանայս. այլ զկոյս 'ի զաւակէ տանն իղի. և այրի՝ եթէ իցէ 'ի քահանայէ մնացեալ՝ առցեն։ 23 *Եւ զժողովուրդն իմ ուսուսցեն. ընտրել 'ի մէջ սրբոյն և պղծոյ. և 'ի մէջ անարատին և արատաւորին։ 24 *Եւ 'ի վր դատաստանի արեան նք կացցեն քննել. զարդարութիւնս իմ արդարացուսցեն. և զիրաւունս իմ իրաւացուսցեն. և զօրէնս իմ. և զհրամանս իմ յամ տօնս պահեսցեն. և զշաբաթս իմ սրբեսցեն։ 25 *Եւ 'ի դի մարդոյ մի՛ մտցեն. բայց եթէ 'ի հօր՝ կամ 'ի մօր՝ և յուստեր՝ և 'ի դստեր՝ և յեղբօր՝ և 'ի քեռ՝ որ առն չիցէ լեալ՝ պղծեսցին։ 26 *Եւ յետ սրբելոյն նր՝ եօթն օր թուեսցէ իւր։ 27 *Եւ յորում մտանիցէ 'ի սրբութիւն սրահին ներքնոյ պաշտել 'ի սրբութիւն՝ մատուսցէ զքաւութիւն՝ ասէ Տր Տր։ 28 *Եւ եղիցի նոցա 'ի ժառանգութիւն. և կալուածք մի՛ տացի նց 'ի մէջ որդւոցն իղի. զի ես եմ նց 'ի ժառանգութիւն։ 29 *Եւ զզոհսն՝ և զվասն մեղացն, և զվասն անգիտութեանն՝ նոքա կերիցեն. և ամ նուէրքն իղի՝ նց լիցին։ 30 *Պտուղ ամենայնի, և անդրանիկք ամենեցուն, և երախայրիք յամ պտղոց ձերոց՝ քահանայիցն եղիցին. և զառաջին մուտ արդեանց ձերոց տաջիք քահանային. դնել օրհնութիւն 'ի վր տանց ձերոց։ 31 *Զամենայն մեռելոտի՝ և զգազանաբեկ 'ի թռչնոց և յանասնոց մի՛ կերիցեն քահանայքն։

յամենե_ սեան

ներքնոյ

Ղևտ. 21. 13.

Թւոց 18. 1.

Թւոց 18. 20.

Ելից 13. 2. և 22. 29. և 34. 19.

Ղևտ. 22. 8.

## Գլ. ԽԵ.

1 Եւ 'ի վիճակել ձեզ զերկիրն 'ի ժառանգութիւն, զատուսջիք պտուղ Տն սուրբ յերկրէն. քսան և հինգ հազար երկայնութիւն. և տասն հազար 'ի լայնութիւն նուիրեալ եղիցի յամ սահմանս նորա շուրջանակի։ 2 *Եւ եղիցի յայսմանէ սրբութիւն. հինգ հարիւր առ հինգ հարիւր. չորեքկուսի շուրջանակաւ. և յիսուն կանգուն բացատն շուրջանակի։ 3 *Եւ յայսմ չափու չափեսցեն քսան և հինգ հազար յերկայնութիւն. և տասն հազար 'ի լայնութիւն. և

և 'ի նմա եղիցի սրբութիւն սրբութեանց։ 4 * Նուիրեալ յերկրէն եղիցի քահանայից՝ որք պաշտեն 'ի սրբութեան. և այնոցիկ, որք մերձենան պաշտել զՏր. և եղիցի նց տեղի մի զատեալ 'ի տուն սրբութեանց։ 5 * Քսան և հինգ հազար յերկայնութիւն. և տասն հազար 'ի լայնութիւն եղիցի ղևտացւոցն՝ որք պաշտեն 'ի տաճարին։ եղիցի կալուածս քաղաքի 'ի բնակութիւն։ 6 * Ըստ բնակութեան քաղաքի տացես հինգ հազար 'ի լայնութիւն. և քսան և հինգ հազար յերկայնութիւն. ըստ երախայրեաց սրբութեանց ամի տանն իղի եղիցի։

7 * Եւ առաջնորդին յայսմանէ և անտի յերախայրից սրբոցն 'ի նիստ քաղաքին յանդիման երախայրեաց սրբութեանց. ընդդէմ բնակութեան քաղաքին ընդ կողմն ծովու. և 'ի ծովէ ընդ արևելս. և երկայնութիւն ըստ միոյ վիճակաց. 'ի սահմանացն որք ընդ ծովակողմն. և երկայնութիւն ըստ սահմանաց երկրին՝ որք ընդ արևելս։ 8 * Եւ եղիցի նմա 'ի կալուածս 'ի մէջ իղի. և ոչ ևս բռնասցեն իշխանք որդւոցն իղի ժողովրդեան իմում. և զերկիրն վիճակեալ ժառանգեսցեն տունն իղի ըստ ազգս իւրեանց։ 9 * Այսպէս ասէ Տր Տր. շատ լիցի ձեզ իշխանքդ իղի. արդ 'ի բաց արարէք զապիրատութիւն և զթշուառութիւն. զիրաւունս և զարդարութիւն արարէք. 'ի բաց մերժեցէք զբռնաւորութիւն 'ի ժողովրդենէ իմմէ՝ ասէ Տր ԱԾ։ 10 * Կշիռ արդար. և չափ արդար. և կապիճ արդար եղիցի չափու ձերոյ։ 11 * Եւ կապիճ նոյն լիցի տալոյ և առնլոյ՝ տասներորդ գրուէի եղիցի կապիճ. և տասներորդն գրուէի կապիճ. կշիռ ըստ գրուէին և ըստ արդուին եղիցի։ 12 * Եւ քսան կշիռն դանկ. և քսան սիկղ. և քսան և հինգ սիկղ. և 'ի քսան և հինգ սիկեղէ եղիցի ձեզ մնաս մի։ 13 * Եւ այս՝ պտուղ իցէ՝ զոր զատանիցէք զվեցերորդ չափուն 'ի գրուէ ցորենոյ. և զվեցերորդ արդուի 'ի քոռէ գարւոյ։ 14 * Եւ հրաման ձիթոյ. քսեստ մի իւղոյ. տասներորդ սափորոյն. զի տասն քսեստն է սափոր մի։ 15 * Եւ ոչխար մի 'ի տասն ոչխարէ. նուէրք յամ ազգացն իղի 'ի զոհս և յողջակէզս քաւութեան և փրկութեան ձերոյ՝ ասէ Տր ԱԾ։ 16 * Եւ ամ ժողովուրդ երկրիդ տացէ զերախայրիս յառաջնորդն իսրայէլի։ 17 * 'Ի ձեռն առաջնորդին եղիցին ողջակէզքն՝ և զոհքն և սպանդքն 'ի տօնս՝ և յամսագլուխս և 'ի շաբաթս. և յամ տանդ իղի. և նա մատուսցէ զվասն մեղացն. և

Ելից. 30. 13. Ղևտ. 27. 25. Թւոց. 3. 47.

զզոհսն՝ և զողջակէզսն. և զվասն փրկութեան քաւել զտունդ իղի։ 18 * Այսպէս ասէ Տր Տէր ԱԾ. յառաջնում ամսեանն՝ որ օր մի է ամսոյն՝ առնուցուք զուարակ մի յանդէոյ անարատ՝ քաւել զսրբութիւն։ 19 * Եւ առցէ քահանայն յարենէ քաւութեանն. և ցանեսցէ 'ի վրն սեմոց տանն. և 'ի վրն չորեցունց անկեանց տաճարին. 'ի վերայ սեղանոյն. և 'ի վրն սեմոց դրան ներքին սրահին։ ներքնոյ 20 * Եւ այսպէս արասցէ. որ օր եօթնէ ամսոյն. յամ յանդէտս յանցաւորէ և 'ի տղայոց քաւել զտունն։ 21 * Եւ յամսեանն առաջնում. որ օր չորեքտասան է ամսոյն՝ եղիցի ձեզ տօնն պասեք. 22 զեօթն օր բաղարջ կերիջիք։ * Եւ արասցէ առաջնորդն վասն իւր՝ և վասն տանն՝ և վն ամ ժողովրդեան երկրին զզուարակ մի յարքառոյ վն մեղաց։ 23 * Զեօթն օր տօնին արասցէ ողջակէզս Տն. եօթն զուարակ՝ և եօթն խոյ անարատ. աւուր աւուր՝ զեօթն օր. և վն մեղաց նոխազ մի յայծեաց աւուր աւուր։ 24 * Եւ զոհ և նաշիհ գործեալ զուարակին. և հաց գործեալ ըստ խոյին. և քսեստ մի իւղ ըստ հացին։ 25 * Եւ յամսեանն վեցերորդի 'ի հնգետասան օր ամսոյն, արասցեն զտօն նն օրինակի եօթանց աւուրց. որպէս վն մեղացն՝ նոյնպէս և վն ողջակիզաց. և ըստ նաշհոյն՝ և ըստ ձիթոյ։ և յամսեան եօթներորդի

## Գլ: ԽՕ:

1 Այսպէս ասէ Տր ԱԾ. դուռն՝ որ 'ի ներքնում սրահին հայի ընդ արևելս. եղիցի փակեալ զվեց աւուրսն արդոյս. և յաւուրս շաբաթուց բացցի. յորագործ 2 և յաւուրս ամսագլխոյն բացցի։ * Եւ եկեսցէ ընծ առաջնորդն ընդ ճանապարհ կամարի դրանն արտաքնոյ. և կացցէ 'ի վրն սեմոց դրանն. և արասցեն քահանայքն ողջակէզս վն նորա. և զփրկութեանցն վն նորա. և երկիրպագցէ 'ի վրն սեմոց դրանն՝ և ելցէ. և դուռնն 3 մի փակեսցի մինչև ցերեկոյ։ * Եւ երկիրպագանիցէ ժողովուրդ երկրին առաջի մտից դրանն յաւուր շաբաթուց՝ և յամսագլուխս՝ առաջի Տն։ 4 * Եւ զողջակէզսն՝ զորս մատուսցէ Տն յաւուր շաբաթուց, վեց որոջս անարատս՝ 5 և խոյ մի անարատ։ * Եւ մանանայ եփեալ առ խոյն՝ և առ որոջն զոհ. և տուրս ընդ ձեռին նորա. և քսեստ 6 իւղոյ ըստ հացին։ * Եւ յաւուրն ամսամտից զուարակ մի որդի պառակամոր անարատ. և վեց որոջքն՝ և խոյքն 7 անարատք եղիցին։ * Եւ նաշիհ ըստ զուարակին. և նաշիհ 'ի մաննայ ըստ խոյին՝

խոյին՝ և ըստ որոջաց. որպէս և պատրաստեսցի 'ի ձեռս իւր. և իւղ ի՛ն նաշհոյն։

8 * Եւ 'ի մտանել առաջնորդին՝ ընդ ճանապարհ կամարի դրանն մտցէ. և ընդ նոյն ճանապարհ դրանն ելցէ։

9 * Եւ յորժամ մտանիցէ ժողովուրդ երկրին առաջի Տն 'ի տօնս՝ որ մտանիցէ ընդ ճանապարհ դրանն հիւսիսոյ երկիր պագանել, ելցէ ընդ ճանապարհ դրանն հարաւոյ. և որ մտանիցէ ընդ ճանապարհ դրանն հարաւոյ, ելցէ ընդ ճանապարհ դրանն հիւսիսոյ. և մի՛ դարձցի ընդ ճանապարհ դրանն, ընդ որ եմուտ. այլ ուղորդ ընդ նոյն ելցէ։

10 * Եւ առաջնորդն 'ի մէջ նոցա, 'ի մտանելն նոցա, ընդ նոսին մտցէ. և ընդ ելանել նոցա ի՛ն նոսին ելցէ։

11 *Եւ 'ի տօնս՝ և 'ի ժողովս եղիցի մաննայ եփեալ ըստ զուարակին. և մաննայ ըստ խոյին. և ըստ որոջացն, որպէս պատրաստեսցի 'ի ձեռս նր. և քսեստ մի իւղոյ ի՛ն հացին։

12 *Ապա եթէ առնիցէ առաջնորդն զխոստովանութեն ողջակէզս. և զկամաւոն փրկութե Տն. բացցէ իւր զդուռնն՝ որ հայի ընդ արևելս. և արասցէ զողջակէզսն իւր՝ և զվ ի՛ն փրկութեն. ըստ օրինակի որպէս և առնիցէ յաւուր շաբաթուցն. և ելցէ, և փակեսցէ զդուռնսն յետ ելանելոյն իւրոյ։

13 * Եւ բուծ մի տարևոր անարատ արասցէ յողջակէզս Տն. հանապազօր այգուն այգուն արասցէ զայն։

14 *Եւ մաննայ ի՛ն նմին, այգուն այգուն. զվեցերորդ մասն չափուն. և երրորդ մասն քսեստի իւղ խառնեալ 'ի նաշիհն մաննայ Տն հրաման յաւիտենական։

15 *Հանապազ մատուցանիցէ զգառնն, զմաննայն, և զիւղն արասցէ այգուն այգուն՝ ողջակէզ հանապազորդ։

16 *Այսպէս ասէ Տր Տր. և եթէ տացէ առաջնորդն պարգև միում յորդւոյն իւրոց 'ի ժառանգութե իւրմէ. և եղիցի այն որդւոյն նր 'ի կալուածս ժառանգութեն։

17 * Եւ եթէ տայցէ պարգև 'ի ժառանգութե իւրմէ, միում ծառայից իւրոց. եղիցի նմա այն մինչև ցտարին թողութե. ապա դարձցի անդրէն առ առաջնորդն. բայց ժառանգութի որդւոցն նորա, նոցին եղիցի։

18 *Եւ մի՛ առցէ առաջնորդն 'ի ժառանգութե ժողովրդեան իւրոյ բռնադատել զնս. այլ յիւրմէ կալուածոյ՝ և յիւրմէ ժառանգութե ժառանգեցուսցէ որդւոցն իւրոց. զի մի՛ ցրուեսցի ժողովուրդն իմ յիւրաքանչիւր բնակութե։

19 *Եւ տարաւ զիս ընդ ճանապարհ դրանն հարաւոյ. 'ի պաշտկամբ սրբութեց քահանայիցն, որ հայէր ի՛ն հիւսիսի. և ահա անդ տեղի զատեալ։

20 *Եւ ասէ ցիս՝ այս է տեղի՝ յորում եփեսցեն քահանայքն զվն անդ խոտեն՝ և զվն մեղացն. անդ եփեսցեն և զմաննայն. ամենևին մի՛ ելանել 'ի սրահն արտաքին սրբել զժողովուրդն։

21 *Եւ եհան զիս 'ի սրահն արտաքին. և շրջեցոյց զիս ընդ չորս կողմանս սրահին. և ահա գաւիթք առ գաւիթս։

22 *Ընդ չորս կողմանս սրահին, գաւթին փոքու քառասուն կանգուն երկայնութի. և լայնութի երեսուն կանգուն. մի չափ էր չորեցունց։

23 * Եւ պաշտամբք շուրջանակի զչորեքումբք. և խոհակերոցք շինեալք 'ներքոյ պաշտամբացն շուրջանակի։

24 *Եւ ասէ ցիս՝ այս տունք են խոհակերաց. ուր հասուցանիցեն պաշտօնեայք տանն ըզզենլիս ժողովրդեանն։

## ԳԼ. ԽԷ.

1 Եւ եմոյծ զիս առաջի դրան տաճարին. և ահա ելանէր ջուր 'ներքոյ վայրադաւթայ տաճարին ի՛ն արևելս. զի երեսք տաճարին հայէին ընդ արևելս. և ջուրն հոսէր յաջմէ կողմանէ տաճարին 'ի հիւսիսոյ՝ 'ի սեղանն կոյս։

2 *Եւ եհան զիս ի՛ն ճանապարհ դրանն հիւսիսոյ. և շրջեցոյց զիս ընդ ճանապարհ դրանն արտաքնոյ. առ դրամբն արտաքնով, որ հայիւր ընդ արևելս. և ահա ջուր հոսէր յաջմէ կողմանէ։

3 *Իբրև զելս առն դէմ յանդիման. և չափ 'ի ձեռին իւրում. և չափեաց հազար չափով. և էանց ընդ ջուրն՝ ջուր յորդութեան։

4 *Եւ չափեաց հազար չափով. և էանց ընդ ջուրն. և հարկանէր ջուրն մինչև ցերանս. և չափեաց հազար չափով. և էանց ընդ ջուրն. և հարկանէր ջուրն մինչև ցգօտի։

5 * Եւ չափեաց հազար չափով զուղխսն՝ և ոչ կարէր անցանել. զի յորդեաց ջուրն իբրև զյորձանս հեղեղաց. ընդ որ ոչ՛ք անցանիցէ։

6 *Եւ ասէ ցիս, տեսե՞ր որդի մարդոյ. և դարձոյց զիս՝ և տարաւ յափն գետոյն։

7 *Ի շրջել իմում անդ. և յափին գետոյն ծառաստանք բազում յոյժ՝ յայսկոյս յայնկոյս։

8 *Եւ ասէ ցիս. ջուրս այս, որ ելանէ 'ի կողմն գաղիլիացւոց ընդ արևելս. և իջանէ յարաբիայ. և գայ մինչև ցծով 'ի ջուրսն ելից, բժշկեսցէ զջուրս։

9 * Եւ եղիցի ամ շունչ անասնոց 'ի բաց թքելոց. յամ յորոց վերայ եկեսցէ գետն՝ կենդանի լիցին. և եղիցի անդ ձուկն բազում յոյժ. զի հասեալ անդր ջրոյս այսորիկ՝ բժշկեսցէ. և կենդանասցի. յորոց վերայ հասցէ գետն

գետոյն՝ և կեցցէ ։ 10 * Եւ կացցեն ՚ի նմա որսորդք ․ յԵնգադդեայ մինչև յԵնգաղլիմ ․ և ձկունք ուռկանաց առանձինն եղիցին ․ և ձկունք նորա իբրև զձկունս ծովուն մեծի ։ բազմութիւն բազում յոյժ ։ 11 * Եւ յելս նր՝ և ՚ի մուտս նր՝ և ՚ի համբառնալ նորա՝ մի՛ սրբեսցեն ․ այլ ՚յաղ մատնեսցին ։ 12 * Եւ առ գետովն ելցէ՝ զափամբքն յայսկոյս յայնկոյս՝ ամ ծառ ուտելի ․ և մի՛ հնասցի շուրջ զնովաւ ․ և մի՛ պակասեսցի պտուղ նր ․ և զդալարութի իւր յառաջագոյն արձակեսցէ ․ զի ջուրք նր ՚ի սրբութեցն ելանեն ․ և եղիցի պտուղ նոցա ՚ի կերակուր ․ և ելք նց ՚ի բժշկութի ։ 13 * Այսպէս ասէ Տր Տծ ․ այսք են սահմանք ժառանգութեան երկրին ․ զոր ժառանգեցուցանիցես երկոտասան ազգաց որդւոցն Իէլի՝ յաւելուած վիճակաց ։ 14 * Եւ ժառանգեսցեն զնա իւրաքանչիւրոք՝ որպէս և եղբայրն իւր ․ յոր ամբարձի զձեռն իմ տալ հարցն նց ։ և անկցի երկիրն այն ՚ի ձեզ ՚ի վիճակ ժառանգութեան ։ 15 * Եւ այսոքիկ են սահմանք երկրին՝ որ ընդ կողմն հիւսիսոյ ․ ՚ի ծովէ մեծէ, որ իջանէ՝ և մեկնի ՚ի մուտս Եմդադայ ։ 16 * Եմաթայ ․ բերօթայ ․ սաբարսիմայ ․ ՚ի մէջ սահմանացն դամասկոսի ․ և ՚ի մէջ սահմանացն եմաթայ՝ բնակութիւնք ծնանայ՝ որք են ՚ի սահմանս օրանացւոյն ։ 17 * Այսք են սահմանք ՚ի ծովէն հանդրոճանին ծնանայ՝ սահմանք դամասկոսի ․ և ընդ կողմն հիւսիսոյ՝ ըստ հիւսիսոյ ․ և սահմանքն եմաթայ՝ սահմանք հիւսիսոյ ։ 18 * Դէմ յանդիման արևելից ՚ի մէջ օրանացւոյն՝ և դամասկոսի ․ ՚ի մէջ գաղայադացւոյն՝ և ՚ի մէջ երկրին Իէլի ․ յորդանան մեկնէ ընդ ծովակողմն արևելից ․ ընդ արմաւաստանն ․ այս ընդ արևելս ։ 19 * Եւ ընդ հարաւ՝ և ընդ հարաւով ՚ի թեմնայ ․ և յարմաւաստանէ՝ մինչև ՚ի ջուրն մարիբօթ կադէս ․ որ ձգի ՚ի ծովն մեծ ․ այս բաժին հարաւային ․ և առ հարաւով ։ 20 * Եւ այն բաժին ծովուն մեծի ․ որ որոշէ մինչև հանդէպ մտիցն եմաթայ ․ մինչև ՚ի մուտս նորին ․ այսինքն ընդ ծովակողմն եմաթայ ։ 21 * Եւ բաժանեսջիք զերկիրն զայն նոցա ․ և ազգացն Իէլի ։ 22 * Արկջիք զնա ՚ի վիճակս ․ ձեզ՝ և եկացն՝ և պանդխտաց՝ որք ՚ի միջի ձերում ․ որք ծնան որդիս ՚ի միջի ձերում ․ և եղիցին ձեզ իբրև այդենածինք ․ ՚ի մէջ որդւոցն Իէլի եղիցին ․ ընդ ձեզ կերիցեն ժառանգութիւնք ՚ի մէջ ազգացդ Իէլի ։ 23 * Եւ եղիցին յազգ պանդխտաց ՚ի մէջ պանդխտաց՝ որք իցեն ՚ի ձեզ ․ անդ տաջիք նոցա ժառանգութիւն ասէ Տր Տծ ։

## ԳԼ ։ ԽԸ ։

1 Եւ այսոքիկ են սահմանք ցեղիցն ․ ՚ի սկզբանէ կողմանն հիւսիսոյ ․ ըստ կողմանն զառիթափին ․ որ զատանէր ընդ մուտսն եմաթու հանդրոճանին ծնանու ․ սահմանն դամասկոսի առ հիւսիսոյ՝ ըստ կողման բնակութեան եմաթայ ․ և եղիցի նց արևելակողմն մինչև ՚ի ծովակողմն՝ դանայ բաժին մի ։ 2 * Եւ ՚ի սահմանաց անտի դանայ արևելակողմն մինչև ՚ի ծովակողմն՝ ասերայ բաժին մի ։ 3 * Եւ ՚ի սահմանացն ասերայ յարևելից կուսէ մինչև ցծովակողմն, նեփթաղիմի բաժին մի ։ 4 * Եւ ՚ի սահմանացն նեփթաղիմի յարևելից մինչև ՚ի ծովակողմն՝ մանասէի բաժին մի ։ 5 * Եւ ՚ի սահմանացն մանասէի ․ յարևելից կուսէ մինչև ՚ի ծովակողմն, եփրեմի բաժին մի ։

6 * Եւ ՚ի սահմանացն եփրեմի յարևելից կուսէ մինչև ՚ի ծովակողմն՝ ռուբենի բաժին մի ։ 7 * Եւ ՚ի սահմանացն ռուբենի յարևելից կուսէ՝ մինչև ՚ի ծովակողմն , յուդայի բաժին մի ։

8 * Եւ ՚ի սահմանացն յուդայ յարևելից կողմանէ մինչև ցծովակողմն , եղիցի պտուղ նուէրաց ․ քսանևհինգ հազար յերկայնութի և տասնհազար ՚ի լայնութի ․ իբրև զմի ՚ի վիճակացն ՚ի կողմանցն արևելից մինչև ցծովակողմն և եղիցի սրբ ՚ի մէջ նոյա ։

9 * Պտուղ՝ զոր նուիրիցեն Տն ․ յերկայնութի քսանևհինգ հազար ․ և ՚ի լայնութի տասնհազար ։ 10 * Եղիցի պտուղ սրբութեց քահանայիցն ․ ընդ հարաւակողմն քսանևհինգ հազար՝ և ընդ ծովակողմն ՚ի լայնութի՝ տասնհազար՝ և ընդ հարաւակողմն յերկայնութիւն քսանևհինգ հազար՝ և եղիցի սահման սրբութեցն ՚ի միջի նց ։ 11 * Քահանայիցն սրբեցելոց , որդւոցն սադովկայ ․ որք պահեն զպահպանութի տան Տն ․ ոյք ոչ մոլորեցան ՚ի մոլորութի որդւոցն Իէլի՝ որպէս մոլորեցան ղևտացիքն ։ 12 * Եւ եղիցի նց պտուղ տուեալ ՚ի պտղոց երկրին ․ սրբութի սրբութեց ․ ՚ի սահմանացն ղևտացւոց ։ 13 * Եւ ղևտացւոցն՝ որ զհետ սահմանաց քահանայիցն իցէ ․ յերկայնութի քսանևհինգ հազար՝ և ՚ի լայնութի տասնհազար ․ 14 * Ոչ վաճառեսցի ՚ի նոցանէ ․ և ոչ չափեսցի ․ և ոչ առցի առաջինն արդեանց երկրին ․ զի սրբութի Տն է ։ 15 * Բայց հինգհազարն ․ աւելորդ լայնութք առ

քսան և հինգ հազարին . պատուար ար- տաքոյ քաղաքին լինիցի 'ի բնակութիւն. և յարձակավայրս նորին . և եղիցի քա- ղաքն 'ի միջի նորա : 16 * Եւ այս չափ նր. 'ի կողմանէ հիւսիսոյ՝ չորք հազարք և հինգ հարիւր : և 'ի կողմանէ արևե- լից՝ չորքհազարք և հինգհարիւր . և 'ի կողմանէ ծովու՝ չորքհազարք և հինգ հարիւր : 17 * Եւ եղիցի բացատ քաղա- քին, ը̃ հիւսիսի՝ երկերիւր և յիսուն . և ընդ հարաւ՝ երկերիւր և յիսուն . և ընդ արևելս՝ երկերիւր և յիսուն : 18 * Եւ աւելորդ երկայնութեան մերձ առ երախայրեօք սրբութեան . տասն հազար ընդ արևելս . և տասնհազար ընդ ծով . և եղիցին երախայրիք սր- բութեան : և եղիցին արդիւնք նորա 'ի հաց գործաւորի քաղաքին : 19 * Եւ գոր- ծաւորք քաղաքին գործեսցեն զնա յա̃մ ցեղիցն Ի̃լի : 20 * Եւ ա̃մ պտուղն քսան և հինգ հազար՝ առ քսան և հինգ հազար՝ չորեքկուսի զատանիցիք ըզ պտուղ սրբութեան 'ի բնակութենէ քա- ղաքին : 21 * Եւ աւելորդն նորին՝ գլխա- ւորին եղիցի . և անտի 'ի պտուղ սր- բութեան, և 'ի նիստ քաղաքին յանդի- ման նորուն . քսան և հինգ հազար յեր- կայնութիւն մինչև 'ի սահմանսն յարևե- լից կողմանն . և 'ի ծովակողմն, քսան և հինգ հազար մինչև 'ի սահմանս ծո- վակողմանն մերձ առ վիճակ գլխաւո- րին . և եղիցի պտուղ սրբութեան . և սրբութիւն տաճարին 'ի մէջ նր : 22 * Եւ 'ի ժառանգութենէ ղևտացւոցն , և 'ի բնակութենէ քաղաքին , միջոյն գլխա- ւորացն եղիցի . 'ի մէջ սահմանացն յու- դայ . և 'ի մէջ սահմանացն բենիամի- նի՝ գլխաւորին եղիցի : 23 * Եւ աւելորդ ցեղիցն . 'ի կողմանց արևելից մինչև ցծովակողմն, բենիամինի բաժին մի : 24 * Եւ 'ի սահմանացն բենիամինի, 'ի կող- մանց արևելից մինչև 'ի ծովակողմն, շմաւոնի բաժին մի : 25 * Եւ 'ի սահմա- նացն շմաւոնի 'ի կողմանց արևելից մինչև 'ի ծովակողմն, իսաքարայ բա- ժին մի : 26 * Եւ 'ի սահմանաց իսաքարայ՝ 'ի կողմանց արևելից մինչև ցծովա- կողմն, զաբուղոնի բաժին մի : 27 * Եւ 'ի սահմանացն զաբուղոնի 'ի կողմանցն արևելից մինչև ցծովակողմն, գադայ բաժին մի : 28 * Եւ 'ի սահմանացն գա- դայ մինչև ցհարաւ : և եղիցին սահ- մանք նր 'ի թեմանայ . և 'ի ջրոյն ռա- բոթ կադեսու՝ ժառանգութիւն մի մինչև ցծովն մեծ : 29 * Այս երկիր է՝ զոր բա- ժանիցէք վիճակաւ ազգաց Ի̃լի . և այս բաժինք նց՝ ասէ Տր Ա̃ծ : 30 * Եւ այս ելանելիք քաղաքին . ընդ կողմն հիւսիսոյ չորքհազարք և հինգ հարիւր չափու : 31 * Եւ դրունք քաղաքին ը̃ ան- ուանց ազգացն Ի̃լի . դրունք երեք ը̃ կողմն հիւսիսոյ . դուռն մի ռուբինի . և դուռն մի յուդայի . և դուռն մի ղև- եայ : 32 * Եւ ընդ կողմն արևելից չորք հազարք՝ և հինգհարիւր չափու . և դրունք երեք՝ դուռն մի յովսեփայ . և դուռն մի բենիամինի . և դուռն մի դա- նայ : 33 * Եւ ընդ կողմն հարաւոյ չորք- հազարք՝ և հինգհարիւր չափու . և դրունք երեք՝ դուռն մի շմաւոնի . դուռն մի իսաքարայ . դուռն մի զաբու- ղոնի : 34 * Եւ ընդ կողմն ծովու չորքհա- զարք՝ և հինգհարիւր չափու . և դրունք երեք՝ դուռն մի գադայ . դուռն մի ասերայ . դուռն մի նեփթաղիմի :

35 * Շուրջ շրջանակաւ՝ ութևտասն . և անուն քաղաքին յորմէ հետէ լինիցի անդ, Տր եղիցի անուն նորա :



Եւ նոյն ժամայն արքն այնոքիկ կապեցան պատմուճանօք՝ և վարտիօք՝ և ընկեցան 'ի մէջ հնոցին։ 3.21.



Եւ արկին զդանիէլ 'ի գուբ առիւծուցն. և էր անդ աւուրս վեց. եւ 'ի գբին էին առիւծք վեց։ 13.3.

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԴԱՆԻԷԼԻ։

Գլուխ [illegible]։

ԵՒԷՐԱՅՐ 1 ՄԻ ԲՆԱԿԵԱԼ 'ի բաբիլոն. և անուն նր յովակիմ։ *Եւ էառ 2 իւր կին, անուն շուշան՝ դուստր քեղկեայ՝ գեղեցիկ յոյժ՝ երկիւղած 'ի Տէ։ *Եւ 3 ծնօղք նորա արդարք. և ուսուցին զդուստրն իւրեանց ըստ օրինացն մովսէսի։ *Եւ էր յովակիմ մեծատուն 4 յոյժ. և էր նորա բուրաստան մերձ յապարանս իւր. և առ նա ժողովէին հրէայք. զի փառաւորագոյն էր քան զամենեսեան։ *Եւ երեւեցան երկու 5 ծերք 'ի ժողովրդենէ անտի՝ դատաւորք տարւոյն այնմիկ. վորոց խօսեցաւ Տր՝ եթէ ել անօրէնութիւն 'ի բաբելոնէ՝ 'ի ծերոց դատաւորաց։ և համարէին առաջնորդել ժողովրդեանն։

6 *Եւ նոքա հանապազորդէին 'ի տունն յովակիմայ. և գային առ նոսա ամենեքեան 'ի դատաստան։ 7 *Եւ լինէր՝ իբրև ժողովուրդն մեկնիւր զհասարակ աւուրբք՝ մտանէր շուշան՝ և զգնայր 'ի բուրաստանի առն իւրոյ։ 8 *Եւ տեսանէին զնա երկոքին ծերքն հանապազ՝ զի մտանէր, և զգնայր. և ցանկացան նմա։ 9 *Եւ դարձուցին զմիտս իւրեանց՝ և խոտորեցուցին զաչս իւրեանց չհայիլ յերկինս՝ և չյիշել զարդար դատաստանն։ 10 *Եւ էին երկոքեան հարեալք 'ի նմա. և չպատմէին միմեանց զցաւս իւրեանց։ 11 *Զի պատկառէին պատմել զցանկութիւն իւրեանց. քանզի կամէին լինել ընդ նմա։ 12 *Եւ սպասէին նմա ստէպ հանապազ տեսանել զնա. և ասեն ցմիմեանս։ 13 *Երթիցուք 'ի տուն. զի ճաշու ժամ է։ Ելին, և մեկնեցան 'ի միմեանց։ 14 *Եւ դարձեալ անդրէն եկին միւսանգամ առ միմեանս. և հարցեալ միմեանց

զպատճառսն, խոստովան եղեն զյան
կութիւն իւրեանց: ապա եղեն ժամս
դիրք միմեանց՝ թէ ե՞րբ կարասցեն
զնա միայն գտանել: *Եւ եղեւ 'ի սպա 15
սել նոցա նմա 'ի դիպող աւուր. եկն՝
եմուտ երբեմն ոմ յերեկն և յեռանդն՝
երկու միայն աղջկամբք. և ցանկացաւ
լուանալ 'ի բուրաստանի անդ՝ քանզի
տօթ էր: *Եւ ոչ ոք էր անդ. բայց 16
միայն երկու ծերքն թաքուցեալք՝ որք
սպասէին նմա: *Եւ ասէ ցաղջ- 17
կունսն. երթայք, բերէք ինձ իւղ՝ և
օճառ՝ և զդուրս բուրաստանիս փա-
կեցէք՝ զի լուացայց: *Եւ արարին՝ 18
ոմ և ասաց նը. փակեցին զդուրս բու-
րաստանին՝ և ելին 'ի կողմանէ դրանցն՝
բերել զոր ինչ հրամայեաց նոցա. և
ոչ տեսին զծերսն՝ քանզի թաքուցեալք
էին: *Եւ եղեւ իբրև ելին աղջկունքն, 19
յարեան երկու ծերքն՝ և դիմեցին 'ի
վր նր՝ և ասեն: *Ահա դուռք բուրաս 20
տանիս փակեալ են. և չիք ոք՝ որ տե
սանէ զմեզ. և մեք ցանկացեալ եմք
քեզ. վն որոյ և քո հաւանեալ մեզ՝
լեր ընդ մեզ: *Ապա թէ ոչ՝ վկայեմք 21
զքէն. եթէ ոմն պատանի էր ընդ քեզ.
և վասն այնորիկ արձակեցեր զաղջ-
կունսն 'ի քէն: *Յոգւոց եհան շու- 22
շան՝ և ասէ. տագնապ է ինձ յամ կող-
մանց. եթէ զայդ գործ գործեցից՝
մահ է ինձ. և եթէ ոչ գործեցից՝ չեմ
ապրելոց 'ի ձեռաց ձերոց: *Բայց լաւ 23
լիցի ինձ չգործել զայդ՝ և անկանիլ 'ի
ձեռս ձեր. քան թէ մեղայց առաջի
Տն: *Եւ աղաղակեաց 'ի ձայն մեծ 24
շուշան. աղաղակեցին և երկու ծերքն
կից նմին: *Եւ ընթացաւ մինն՝ եբաց 25
զդուրս բուրաստանին: *Իբրև լուան 26
զձայն ճչոյն 'ի բուրաստանի անդ ըն-
տանիքն՝ անկան ընդ կողմն դրանն 'ի
ներս՝ տեսանել թէ զինչ իրք ընդ նա
անցեալ իցեն: *Եւ իբրև ասացին 27
ծերքն զբանս իւրեանց, զամօթի հա
րան ծնօղքն յոյժ. զի ոչ երբեք այն-
պիսիք բանք ասացան զշուշանայ: և
եղեւ 'ի վաղիւն անդր: *Իբրև եկն ժո 28
ղովուրդն առ այր նր յովակիմ. եկին
և երկոքին ծերքն անօրէն մտօք զշու-
շանայ՝ սպանանել զնա: *Եւ ասեն 29
առաջի ժողովրդեանն. յղեցէք զշու-
շանայ դստերն քեղկեայ. որ է կին յո
վակիմայ. և նոքա յղեցին: *Եւ եկն 30
նա՝ և ծնօղք իւր՝ և որդիք իւր՝ և ամ
ազգականք նր: *Եւ շուշան էր փա- 31
փուկ յոյժ՝ և գեղեցիկ տեսլեամբ:
*Եւ անօրէնքն հրամայեցին հոլանի 32
առնել զնա, քանզի քօղեալ էր, զի
լցցին գեղով նորա: *Եւ իւրքն լային. 33

[margin: զամօթէ հարան ծնողայքն]
[margin: յղեցէ առ շուշա- նան դու- ստր քեղ- կեայ:]

և ամենեքեան որք ճանաչէին զնա:
34 *Յարեան ծերքն երկոքին 'ի միջոյ ժո
ղովրդեանն՝ եդին զձեռս իւրեանց 'ի
35 վր գլխոյ նր: *Եւ նա լալով հայե-
ցաւ յերկինս. քանզի էր սիրտ նորա
36 յուսացեալ 'ի Տր: *Ասեն ծերքն եր
կոքեան. մինչդեռ մեք միայն գնայաք
'ի մէջ բուրաստանին, եմուտ դա անդ
երկու աղջկամբք. և փակեաց զդուրս
բուրաստանին. և արձակեաց զաղջ-
37 կունսն: *Եւ եկն առ դա պատանի
մի որ էր թաքուցեալ. և անկաւ ընդ
38 դմա: *Եւ մեք էաք յանկեան բու-
րաստանին. իբրև տեսաք զանօրէնու
թին, ընթացաք առ դոսա. և տեսաք
39 զլինիլ դոցա ընդ միմեանս: *Զնա
ոչ կարացաք ունել. քանզի բուռն էր
քան զմեզ. և եբաց զդուրսն. և փա-
40 խեաւ արտաքս: *Զդա՝ զոր ըմբռ-
նեցաքդ՝ հարցաք թէ ո՞վ էր պատա-
նին. և չկամեցաւ պատմել մեզ՝ զայդ
41 վկայեմք: *Եւ հաւատաց նոցա ա-
տեանն՝ իբրև ծերոց ժողովրդեան՝ և
դատաւորաց. և դատեցին զնա մեռա
42 նիլ: *Աղաղակեաց 'ի ձայն բարձր
շուշան՝ և ասէ. Ած յաւիտենական՝
ծածկագէտ. որ գիտես զամ յառաջ
43 քան զլինիլ նոցա: *Դու գիտես՝ զի
սուտ վկայեն զինէն. և ահա մեռա-
նիմ, որ ոչինչ գործեցի՝ զոր դոքայդ
44 անօրինեն զինէն: *Եւ լուաւ Տէր
45 ձայնի նորա: *Եւ մինչդեռ տանէին
զնա կորուսանել, զարթոյց Ած զհո-
գին որբ 'ի վր մանկան միոյ տղայոյ.
46 որում անուն էր դանիէլ: *Եւ աղա
ղակեաց 'ի ձայն բարձր՝ և ասէ. ան-
47 պարտ եմ ես յարենէ դորա: *Եւ
դարձաւ ամ ժողովուրդն առ նա՝ և
ասեն. զի՞նչ է բանդ՝ զոր դուդ խօսե
48 ցար: *Եւ նա եկաց 'ի միջի՝ և ասէ.
այդպէս անմիտք էք որդիք իէլի. ոչ
քննեցիք: և ոչ 'յիրաւանց վերայ հա-
սիք. և դատապարտեցիք զդուստր
49 իէլի: *Դարձարո՛ւք յատեանն՝ քանզի
50 սուտ վկայեցին զնմանէ: *Եւ դար-
ձաւ ժողովուրդն վաղվաղակի. և ա-
սեն ցնա ծերքն. եկ՝ նիստ 'ի միջի մե-
րում՝ և պատմեա մեզ. զի քեզ ետ Ած
51 զերիցութի: *Եւ ասէ ցնս դանիէլ.
մեկնեցէք զդոսա 'ի միմեանց 'ի բաց.
52 և քննեցուք զդոսա: *Եւ իբրև մեկ
նեցան 'ի միմեանց: և կոչեաց զմին 'ի
նոցանէ, և ասէ ցնա. ով հնացեալ
աւուրք չարութե. այժմ եկին հասին [margin: աւուրքն]
մեղք քո՝ զոր գործէիր յառաջագոյն:
53 *Զի դատէիր զդատաստան անիրաւ
ութե. զանմեղս դատապարտէիր. և
զվնասակարս արձակէիր. ուր Ած
աս-

ստացեալ էր՝ թէ զանմեղն և զարդարն մի՛ սպանանիցես։ 54 *Արդ՝ եթէ տեսեր զդոսա. ընդ որո՞վ ծառով տեսեր զդոսա՝ մինչ խօսէին ընդ միմեանս. և նա ասէ՝ ընդ հերձեաւն։ 55 *Ասէ դանիէլ. բարւոք ստեցեր 'ի քոյին գլուխդ. ահաւասիկ հրեշտակն Այ առեալ հրաման, հերձցէ զքեզ ընդ մէջ։ 56 *Եւ 'ի բաց մերժեաց զնա։ հրամայեաց ածել զմիւսն՝ և ասէ ցնա. զաւակ քանանու՝ և ո՛չ յուդայի. գեղ դորա պատրեաց զքեզ՝ և ցանկութին շրջեաց զսիրտ քո։ 57 *Այդպէս առնէիք զդստերս իղի. և նոքա առ երկիւղի մերձենային առ ձեզ. այլ ո՛չ և դուստր յուդայ կալաւ յանձին զանօրէնութիւն ձեր։ 58 *Արդ՝ ասա՛ ինձ, ընդ որո՞վ ծառով հասեր առ դոսա, մինչդեռ խօսէին ընդ միմեանս. և նա ասէ. ընդ սղոցեաւն։ 59 *Ասէ ցնա դանիէլ. բարւոք ստեցեր դու 'ի քոյին գլուխ. զի կայ աւադիկ հրեշտակն Այ, սուսեր 'ի ձեռին սղոցել զքեզ ընդ մէջ. զի սատակեսցէ զձեզ։ 60 *Եւ աղաղակեաց ամ ժողովուրդն 'ի ձայն մեծ. և օրհնեցին զԱծ որ ապրեցուցանէ զյուսացեալս իւր։ 61 *Եւ յարեան 'ի վերայ երկուց ծերոցն. քանզի յանդիմանեաց զնս դանիէլ 'ի նոցին բերանոց սուտ վկայս։ և արարին ընդ նոսա՝ որպէս եդին չարութի 'ի մտի առնել ընդ ընկերին։ 62 *Ըստ օրինացն մովսէսի։ և սպանին զնոսա. և ապրեցաւ արիւն արդարոյ յաւուր յայնմիկ։ 63 *Իսկ քեղկիա՝ և կին նորա օրհնեցին զՏր՝ վս դստերն իւրեանց շուշանայ՝ համդերձ յովակիմաւ առն նորա՝ և ամենայն ազգականօքն. զի ո՛չ գտան իրք գարշութե 'ի նմա։ 64 *Եւ դանիէլ եղև մեծ առաջի ժողովրդեանն յօրէ յայնմանէ՝ և անդր։

Ելից. 23.7. Օրինաց 19.19. 65*Եւ ...

## ԳԼ. Ա.

1 Յամին երրորդի թագաւորութեանն յովակիմայ արքային յուդայ. եկն նաբուքոդոնոսոր արքայ բաբելացւոց յԵրուսաղէմ. և պաշարեաց զնա։ 2 *Եւ ետ Տր 'ի ձեռս նր զյովակիմ արքայ յուդայ. և 'ի մասնէ սպասուց տանն Այ։ և տարաւ զայն յերկիրն 'ի սենաար 'ի տուն Այն իւրոյ։ 3 *Եւ ասէ թագաւորն ցասփանէզ ներքինապետն իւր՝ ածել յորդւոց գերութեանն իղի՝ և 'ի զաւակէ թագաւորութեանն՝ և 'ի պարթևաց, 4 *Մանկունս անարատս՝ գեղեցիկս երեսօք՝ խելամուտս ամ իմաստութե՝ և հմուտս գիտութե՝ միտավարժս հանճարով՝ և զօրաւորս՝ կալ 'ի տաճարի առաջի թագաւորին. և ուսուցանել նց զդպրութի և զլեզու քաղդէացւոց։ 5 *Եւ կարգեաց նոցա թագաւորն ռոճիկս օր ըստ օրէ 'ի սեղանոյ արքայի. և 'ի գինւոյ զոր ինքն ըմպէր. սնուցանել զնոսա ամիս երիս. (ամս երիս.) և ապա կացուցանել առաջի թագաւորին։ 6 *Եւ էին 'ի նոսա յորդւոցն յուդայ՝ դանիէլ՝ և անանիա՝ և միսայէլ՝ և ազարիա։ 7 *Եւ եդ նոցա ներքինապետն անուանս. դանիէլի բաղտասար. և անանիայ՝ սեդրաք. և միսայելի՝ միսաք. և ազարիայ՝ աբեդնագով։ 8 *Եւ եդ դանիէլ 'ի մտի իւրում չճաշակել 'ի սեղանոյ թագաւորին. և ո՛չ 'ի գինւոյ և յըմպելւոյ նր։ և աղաչեաց զներքինապետն՝ զի մի՛ ճաշակեսցէ։ 9 *Եւ ետ Ած դանիէլի շնորհս և ողորմութի առաջի ներքինապետին։ 10 *Եւ ասէ ներքինապետն ցդանիէլ. երկնչիմ ես 'ի Տեառնէ իմմէ արքայէ. որ կարգեաց ձեզ զկերակուրս ձեր և զըմպելի. գուցէ տեսանիցէ զերեսս ձեր տրտմագոյն քան զայլոց մանկանց հասակակցաց ձերոց. և առնիցէք զիս գլխապարտ թագաւորին։ 11 *Եւ ասէ դանիէլ ցմաղասադ. զոր կացուցեալ էր ներքինապետն 'ի վերայ դանիէլի՝ և անանիայի՝ և միսայելի՝ և ազարիայի։ 12 *Արդ՝ փորձեա՛ զծառայս քո աւուրս տասն՝ և տացեն մեզ ունդս, և կերիցուք. և ջուր, զի արբցուք։ 13 *Եւ երևեսցին առաջի քո գոյնք մեր. և գոյնք մանկանցդ՝ որք ուտեն զսեղան թագաւորին. և որպէս տեսանիցես՝ արասջի՛ր ընդ ծառայս քո։ 14 *Եւ անսաց նոցա՝ և փորձեաց զնոսա աւուրս տասն։ 15 *Եւ յետ կատարելոյ աւուրցն տասանց՝ երևեցան երեսք նց նմա բարիք՝ և հզօրք մարմնով քան զամենայն մանկունսն՝ որք ուտէին զսեղան թագաւորին։ 16 *Եւ առնոյր մաղասադ զընթրիս նց. և զգինի ըմպելւոյ նց. և տայր ունդս չորեցունց մանկանցն։ 17 *Եւ ետ նց Ած իմաստութի և հանճար յամ դպրութե և իմաստութե. և դանիէլ խելամուտ էր ամ տեսլեան, և երազոց։ 18 *Եւ յետ կատարածի աւուրցն՝ հրամանն ետ թագաւորն ածել զնոսա. և եած զնոսա ներքինապետն առաջի նաբուքոդոնոսորայ։ 19 *Եւ խօսեցաւ ընդ նոսա արքայն. և ո՛չ գտան յամի նման դանիէլի՝ և անանիայ՝ և միսայէլի՝ և ազարիայ։ և կային առաջի թագաւորին։ 20 *Եւ յամ բան իմաստութե և գիտութե, զոր խնդրէր 'ի նոցանէ թագաւորն՝ գտանէր զնս տասնպատիկ առաւել քան զամ գէտս և մոգս.

մոգս․ որք էին 'ի թագաւորութեն ն՟ր։

‖ Վ. այր. 6.28.

21 * ‖ Բայց եղև դանիէլ մինչև յամն առաջներորդ կիւրոսի արքայի։

## Գլ․ Բ․

Տեսիլ առաջներորդ։

1 Յամին երկրորդի թագաւորութեն իւրոյ․ ետես երազ նաբուգոդոնոսոր․ և յիմարեցաւ ոգի ն՟ր․ և քունն հատաւ 'ի նմանէ։ 2 * Եւ ասէ թագաւորն․ կոչեցէք զգէտս՝ և զմոգս՝ և զկախարդս՝ և զքաղդեայս պատմել թագաւորին զերազ իւր ։ և եկին՝ կացին առաջի թագաւորին։ 3 * Եւ ասէ ցնոսա թագաւորն ։ զերազ տեսի՝ և յիմարեցաւ ոգի իմ խելամուտ լինիլ երազոյն։ 4 * Եւ խօսեցան քաղդեայքն ընդ թագաւորին ասորերէն։ արքայ յաւիտեան կեաց ․ ասա դու զերազն ծառայից քոց․ և զմեկնութի ն՟ր ասասցուք։ 5 * Պատասխանի ետ արքայն՝ և ասէ ցքաղդեայսն։ բանն վերացաւ յինէն․ արդ՝ եթէ ոչ ցուցանիցէք ինձ զերազն՝ և զմեկնութի նորա ,'ի կորուստ լինիցիք․ և տունք ձեր յաւար լինիցին։ 6 *Ապա եթէ զերազն՝ և զմեկնութիւն նորա ցուցանիցէք ինձ , պարգևս՝ և տուրս բազումս՝ և պատիւս առնուցուք յինէն ։ բայց միայն զերազն և զմեկնութի նորա պատմեցէք ինձ։ 7 * Պատասխանի ետուն կրկին անգամ, և ասեն․ ասասցէ արքայ զերազն ծառայից իւրոց՝ և զմեկնութի ն՟ր պատմեսցուք ։ 8 * Պատասխանի ետ արքայ՝ և ասէ ։ Ճշմարտիւ գիտեմ, եթէ ժամանակաճառ լինիք․ զի տեսիք թէ բանն վերացաւ յինէն։ 9 * Արդ՝ եթէ զերազն ոչ պատմէք ինձ, գիտեմ, զի բան սուտ զեղծուցանելի միաբանեալ էք ասել առաջի իմ․ մինչև ժամանակ անցցէ ։ ասացէք ինձ զերազն իմ․ և գիտացից՝ եթէ և զմեկնութի ն՟ր պատմելոց էք ինձ ։ 10 * Պատասխանի ետուն միւսանգամ քաղդեայքն առաջի թագաւորին՝ և ասեն ։ ոչ գոյ մարդ 'ի վ՟ր երկրի՝ որ զբանն թագաւորի կարօղ է ցուցանել ։ զի ամ՟ թագաւոր մեծ և իշխան , բան զայդպիսի ոչ հարցանէ ցգէտ՝ և ցմոգ՝ և ցքաղդեայ ։

ջարօղէցէ

11 * Զի բանդ՝ զոր արքայ հարցանէ՝ ծանր է․ և այլոք չիք՝ որ պատմիցէ զայդ առաջի արքայի․ բայց եթէ դիք՝ որոց ոչ է բնակութի 'ի մէջ ամ՟ մսեղեաց։ 12 * Յայնժամ թագաւորն բարկութբ՟՝ և սրտմտութբ՟ բազմաւ ասաց կոտորել զամ՟ իմաստունս բաբելացւոց ։ 13 * Եւ հրաման ել․ և իմաստունքն կոտորէին ։ խնդրեցին զդանիէլ՝ և զբարեկամս ն՟ր սպանանել ։ 14 * Յայնժամ դանիէլ խօսեցաւ խորհուրդ՝ և խրատ ը՟ արիովքայ դահճապետին արքայի՝ որ ելեալ կոտորէր զիմաստունս բաբելացւոց՝ իշխան թագաւորին։ 15 * Վասն է՞ր ել հրամանդ այդ խիստ յերեսաց արքայի։ և յայտնեաց զբանն արիովք դանիէլի։ 16 * Եւ դանիէլ եմուտ՝ և աղաչեաց զարքայն․ զի տացէ նմա ժամ․ և զմեկնութի ն՟ր պատմեսցէ թագաւորին։ 17 * Եւ եմուտ դանիէլ 'ի տուն իւր ․ և անանիայ՝ և ազարիայ՝ և միսայէլի բարեկամաց իւրոց՝ եցոյց ըզբանն։ 18 * Եւ խնդրէին զգթութիւն յԱ՟յ երկնից․ զի մի կորիցէ դանիէլ՝ և բարեկամք իւր ընդ այլ իմաստունս բաբելացւոց ։ 19 * Յայնժամ՝ դանիէլի 'ի տեսլեան գիշերոյն յայտնեցաւ խորհուրդն։ և օրհնեաց զԱ՟ծ երկնից դանիէլ։ 20 * Եւ ասէ՝ եղիցի անուն Ա՟յ օրհնեալ յաւիտենից մինչև յաւիտեան․ զի իմաստութի՝ և հանճար՝ և զօրութի ն՟ր է ։ 21 * Եւ նա փոփոխէ զժամանակս՝ և զժամս․ կացուցանէ զթագաւորս , և փոփոխէ․ տայ իմաստութիւն իմաստնոց՝ և խորհուրդ խորհրդականաց։ 22 * Ինքն յայտնէ զխորս՝ և զգաղտնիս․ գիտէ, որ կայ 'ի խաւարի․ և լոյս ընդ նմա է ։ 23 * Զքեզ , Ա՟ծ հարցն մերոց , գոհանամ, և օրհնեմ։ զի զիմաստութի և զզօրութի ետուր ինձ․ և ծանուցեր ինձ՝ զորինչ աղօթիւք խնդրեցաք մեք 'ի քէն․ և զտեսիլ թագաւորին ցուցեր ինձ ։ 24 * Եւ եմուտ դանիէլ առ արիովք՝ զոր կացուցեալ էր թագաւորին կորուսանել զիմաստունս բաբելոնի ։ և ասէ ցնա․ զիմաստունս բաբելացւոց մի կոտորեր ։ բայց զիս տար առաջի թագաւորին ։

25 * Յայնժամ արիովք փութապէս տարաւ զդանիէլ առաջի թագաւորին․ և ասէ ցնա․ գտի այր մի յորդւոց գերութեն հրէաստանի , որ զմեկնութին պատմեսցէ արքայի ։ 26 * Պատասխանի ետ թագաւորն՝ և ասէ ցդանիէլ՝ որոյ անունն բաղտասար ։ եթէ կարօղ իցես պատմել ինձ զերազն՝ զոր տեսի՝ և զմեկնութի ն՟ր։ 27 * Պատասխանի ետ դանիէլ առաջի թագաւորին՝ և ասէ․ զխորհուրդդ զայդ՝ զոր արքայ հարցանէ , ոչ է իմաստնոց՝ և մոգուց՝ և գիտաց՝ և ըղձից՝ պատմել առաջի արքայի։ 28 * Այլ գոյ Ա՟ծ յերկինս՝ որ յայտնէ զխորհուրդս ․ և եցոյց նաբուգոդոնոսոր արքայի՝ որինչ լինելոց է յաւուրս յետինս ․ երազն՝ և տեսիլ գլխոյ քոյ յանկողնի քում․ այս է արքայ։

* Խոր-

**29** *Խորհուրդք քո մտայոյզ առնէին զքեզ յանկողնի քում. եթէ զի՞նչ լինելոց իցէ յետ այսորիկ ։ եւ յայտնիչն խորհրդոց եցոյց քեզ՝ զի՛նչ լինելոց է ։

**30** *Եւ ինձ ո՛չ առ իմաստութեա՛ն ինչ՝ որ իցէ յիս քան յա՟մ կենդանիս՝ յայտնեցաւ խորհուրդն. այլ վ՟ս ցուցանելոյ արքայի զմեկնութի՟ն. զի ծանիցես զխորհուրդս սրտի քոյ ։

**31** *Դու արքայ՝ տեսանէիր. եւ ահա պատկեր մի մեծ ։ եւ երեւք նորա՝ եւ տեսիլ նո՟ր ահագին յոյժ ։ եւ կայր առաջի քո ։ ահաւոր էր պատկերն ։

**32** *Որոյ գլուխն յոսկւոյ սրբոյ. ձեռքն՝ եւ լանջքն՝ եւ բազուկք իւր՝ արծաթիք ։ մէջքն՝ եւ բարձք պղնձիք ։

**33** *Եւ սրունքն երկաթիք ։ եւ ոտքն, կէս յերկաթոյ՝ եւ կէս 'ի խեցւոյ ։

**34** *Հայէիր, մինչեւ հատաւ վէմ առանց ձեռին. եւ էհար զպատկերն 'ի վ՟ր երկաթեղէն՝ եւ խեցեղէն ոտիցն՝ եւ մանրեաց զնոսա իսպառ ։

**35** *Յայնժամ առ հասարակ մանրեցան. խեցին՝ եւ երկաթն. պղինձն՝ եւ արծաթն՝ եւ ոսկին. եւ եղեն իբրեւ զփոշի կալոյ ամարայնոյ ։ եւ եհառ զնո՟ սաստկութի՟ հողմոյ. եւ տեղի ոչ գտանիւր նո՟ց. եւ վէմն՝ որ էհար զպատկերն, եղեւ լեառն մեծ՝ եւ ելից զա՟մ երկիր ։

**36** *Այս է երազն. եւ զմեկնութի՟ նո՟ր ասասցուք առաջի արքայի ։

**37** *Դու ես արքայ՝ արքայից արքայ. որում Ա՟ծ երկնից զթագաւորութիւն հզօր՝ եւ զպատուական ետ ։

**38** *Եւ ընդ ա՟մ տեղիս ուր բնակեալ են որդիք մարդկան. զգազանս վայրի՝ եւ զթռչունս երկնից՝ եւ զձկունս ծովու ետ 'ի ձեռս քո ։ եւ կացոյց զքեզ տ՟ր ա՟մի ։ դու ես գլուխն ոսկի ։

**39** *Եւ զկնի քո յարիցէ այլ թագաւորութի՟ խոնարհագոյն քան զքեզ ։ եւ թագաւորութի՟ն երրորդ՝ որ է պղինձն. տիրեսցէ ա՟մ երկրի ։

**40** *Եւ թագաւորութի՟ն չորրորդ՝ հզօր իբրեւ զերկաթ ։ զոր օրինակ երկաթ մանրէ՝ եւ մաշէ զա՟մ. նոյնպէս մանրեսցէ՝ եւ մաշեսցէ զա՟մ ։

**41** *Եւ զի տեսանէիր զոտսն՝ եւ զմատունսն. կէս կողմն 'ի խեցւոյ. եւ կէս կողմն յերկաթոյ ։ թագաւորութի՟ բաժանեալ լիցի՝ եւ յարմատոյ երկաթոյն եղիցի նմա. զոր օրինակ տեսանէիր զերկաթն ընդ խեցին խառնեալ ։

**42** *Եւ մատունք ոտիցն, կողմն մի յերկաթոյ. եւ կողմն մի խեցւոյ ։ մի կողմն թագաւորութեա՟ն հզօր կացցէ. եւ 'ի նմանէ եղիցի ջաղջախն ։

**43** *Զի տեսանէիր զերկաթն ընդ խեցին խառնեալ. եղիցին խառն 'ի զաւակէ մարդկան. եւ 'ի միմեանս ոչ յարիցեն. զոր օրինակ ոչ խառնիցի երկաթ ը՟ խեցի ։

**44** *Եւ յաւուրս թագաւորացն այնոցիկ՝ յարուսցէ Ա՟ծ երկնից զթագաւորութի՟՝ որ յաւիտեան ոչ եղծանիցի. եւ թագաւորութի՟ նո՟ր ազգի այլում ոչ մնասցէ ։ մանրեսցէ՝ եւ հոսեսցէ զա՟մ թագաւորութի՟ս. եւ ինքն կացցէ յաւիտեանս ։

**45** *Որպ՟ տեսանէիր՝ զի 'ի լեռնէն հատաւ վէմ առանց ձեռին. եւ մանրեաց զխեցին եւ զերկաթ՝ զպղինձն՝ եւ զարծաթ՝ եւ զոսկի ։ Ա՟ծ եցոյց արքայի՝ որինչ լինելոց է առ յապայ. եւ ճշմարիտ է երազն՝ եւ հաւատարիմ մեկնութի՟ նո՟ր ։

**46** *Յայնժամ արքայն Նաբուգոդոնոսոր անկաւ 'ի վ՟ր երեսաց իւրոց. եւ երկիր եպագ Դանիէլի ։ եւ զոհս՝ եւ խունկս անուշութե՟ հրամայեաց մատուցանել նմա ։

**47** *Պատասխանի ետ թագաւորն՝ եւ ասէ ցԴանիէլ ։ արդարեւ Ա՟ծն ձեր՝ նա է Ա՟ծ աստուծոց՝ եւ Տ՟ր տերանց՝ եւ թագաւոր թագաւորաց՝ որ յայտնէ զխորհուրդս ։ եւ զի յայտնել կարացեր զխորհուրդդ զայդ ։

**48** *Եւ մեծացոյց թագաւորն զԴանիէլ. եւ պարգեւս մեծամեծս՝ եւ բազումս ետ նմա. եւ կացոյց զնա 'ի վ՟ր աշխարհին Բաբիլացւոց. եւ իշխան նախարարացն եւ 'ի վ՟ր ա՟մ իմաստնոյն Բաբիլացւոց ։

**49** *Եւ Դանիէլ խնդրեաց յարքայէ. եւ կացոյց 'ի վերայ գործոց աշխարհին Բաբիլացւոց, զՍեդրաք՝ զՄիսաք՝ եւ զԱբեդնագով ։ եւ Դանիէլ էր 'ի դրան արքային ։

## ԳԼ ։ Գ ։

**1** Յամին ութուտասներորդի Նաբուգոդոնոսորայ արքայի. արար պատկեր ոսկի. բարձրութի՟ նո՟ր վաթսուն կանգուն. եւ լայնութի՟ նո՟ր կանգուն վեց. եւ կանգնեաց զնա 'ի դաշտին Դեերայ յաշխարհին Բաբիլացւոց ։

**2** *Եւ արձակեաց ժողովել զզօրավարս՝ եւ զզօրագլուխս՝ եւ զկուսակալս՝ զպետս՝ եւ զբռնաւորս՝ եւ զգործակալս՝ եւ զամենայն իշխանս աշխարհաց գալ 'ի նաւակատիս պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր ։

**3** *Եւ ժողովեցան կուսակալք՝ զօրավարք՝ եւ զօրագլուխք՝ պետք՝ եւ բռնաւորք. մեծամեծք՝ եւ գործակալք՝ եւ ա՟մ իշխանք աշխարհաց. գալ 'ի նաւակատիս պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր. եւ կային առաջի պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր ։

**4** *Եւ քարոզ կարդայր զօրութ՟՝ եւ ասէր՝ ձեզ ասի ազգք՝ եւ ազինք՝ եւ լեզուք ։

**5** *Յորժամ լսիցէք զձայն փողոյ՝ սրնգի՝ թմբկի՝ եւ քնարի՝ տաւղի եւ երգոյ միաբանութե՟

եւ

և ամ̃ ազգաց արուեստականաց․ անկանիջիք և երկիր պագանիջիք պատկերին՝ զոր կանգնեաց Նաբուգոդոնոսոր արքայ։ 6 * Եւ որ ոչ անկեալ երկիր պագանիցէ՝ ՚ի նմին ժամու ընկեսցի ՚ի հնոց հրոյն բորբոքելոյ։ 7 * Եւ եղև իբրև լուան ազգքն զձայն փողոյն՝ սրնգին՝ տաւղի՝ և նուագարանաց․ և ամ̃ ազգաց արուեստականաց, անկանէին ամ̃ ազգք և ազինք՝ և լեզուք, և երկիր պագանէին պատկերին ոսկւոյ․ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր։ 8 * Յայնժամ մատեան արք քաղդէացիք՝ և եղեն չարախօսք զհրէից, առ Նաբուգոդոնոսոր։ 9 * Եւ ասեն․ արքայ՝ յաւիտեան կաց։ 10 * Դու հրաման ետուր ամենայն մարդոյ՝ որ լսիցէ զձայն փողոյ՝ և սրնգի՝ և քնարի․ և տաւղի՝ և նուագարանաց․ և ամ̃ ազգաց արուեստականաց։ 11 * Եւ որ ոչ երկիրպագանիցէ պատկերին ոսկւոյ՝ անկցի ՚ի հնոց հրոյն բորբոքելոյ։

12 * Արդ՝ են աստ արք հրէայք․ զորս կացուցեր ՚ի վ̃ր գործոց աշխարհիս բաբիլացւոց․ սեդրաք․ միսաք․ և աբեդնագով․ որք ոչ հնազանդեցան հրամանի քում արքայ․ և զդիս քո ոչ պաշտեն․ և պատկերիդ ոսկւոյ՝ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ պագանեն։ 13 * Յայնժամ Նաբուգոդոնոսոր սրտմտութ̃բ և բարկութ̃բ հրամայեաց ածել զսեդրաք՝ զմիսաք՝ և զաբեդնագով․ և ածին առաջի թագաւորին։ 14 * Պատասխանի ետ Նաբուգոդոնոսոր՝ և ասէ ցնոսա։ թէ արդարև՝ սեդրաք՝ միսաք՝ և աբեդնագով․ զդիս իմ ոչ պաշտէք՝ և պատկերին ոսկւոյ՝ զոր կանգնեցի, երկիր ո՞չ պագանիցէք։ 15 * Բայց եթէ պատրաստ լինիցիք․ զի յորժամ լսիցէք զձայն փողոյ սրնգի՝ և թմբկի․ և քնարի․ և զմիաբանութ̃ն ամ̃ ազգաց արուեստականաց․ անկանիցիք՝ և երկիրպագանիցէք պատկերին՝ զոր արարի։ ապա թէ ոչ պագանիցէք երկիր, ՚ի նմին ժամու անկցիք ՚ի հնոց հրոյն բորբոքելոյ․ և ո՞վ է Ա̃ծ՝ որ փրկեսցէ զձեզ ՚ի ձեռաց իմոց։ 16 * Պատասխանի ետուն՝ սեդրաք՝ միսաք՝ և աբեդնագով․ և ասեն ցարքայ Նաբուգոդոնոսոր․ ոչի՛նչ է պիտոյ վասն բանիդ այդորիկ տալ քեզ պատասխանի։

17 * Զի է մեր Ա̃ծ յերկինս՝ զոր մեքն պաշտեմք․ կարող է փրկել զմեզ ՚ի հնոցէ հրոյդ բորբոքելոյ․ և ՚ի ձեռաց քոց արքայ՝ ապրեցուցանել զմեզ։

18 * Ապա թէ ոչ՝ այս ինչ յայտնի լիցի քեզ արքայ․ զդիս քո մեք ոչ պաշտեմք․ և պատկերիդ ոսկւոյ՝ զոր կանգնեցեր՝ 19 երկիր ոչ պագանեմք։ * Յայնժամ Նաբուգոդոնոսոր լի եղև սրտմտութ̃բ․ և գոյն երեսաց նր̃ա շրջեցաւ՝ ՚ի վերայ սեդրաքայ՝ միսաքայ՝ և աբեդնագովի և ասէ՝ ջեռուցէք զհնոցն եօթնպատիկ՝ զի մինչև ՚ի վախճան այրեսցին։

20 * Եւ արք հզօրք զօրաւորք զօրութ̃բ՝ կապեցին զսեդրաք՝ զմիսաք՝ և զաբեդնագով՝ արկանել ՚ի հնոց հրոյն բորբոքելոյ։ 21 * Յայնժամ արքն այնոքիկ կապեցան պատմուճանօք՝ և վարտեօք․ արտախուրակօք՝ և զանկապանօք իւրեանց․ և ընկեցան ՚ի մէջ հնոցի հրոյն բորբոքելոյ։ 22 * Զի հրաման թագաւորին սաստկանայր․ և հնոցն բորբոքիւր եօթնպատիկ առաւել յոյժ։

23 * Եւ երեքին նոքա՝ սեդրաք՝ միսաք՝ և աբեդնագով, անկան ՚ի մէջ հնոցին կապեալք։ 24 * Եւ գնային ՚ի մէջ հրոյն։ 25 օրհնէին՝ և գովէին զՏ̃ր Ա̃ծ։ * Յարեաւ ազարիա․ և եկաց յաղօթս այսպէս․ եբաց զբերան իւր ՚ի մէջ հրոյն՝ և ասէ։ 26 * Օրհնեալ ես Տ̃ր Ա̃ծ հարցն մերոց․ գովեալ՝ և փառաւորեալ է անուն քո յաւիտեան։ 27 * Զի արդար ես յամ̃ի՝ զոր ածեր ՚ի վ̃ր մեր՝ և ամ̃ գործք քո ճշմարիտք են․ և ուղիղք են ճանապարհք քո՝ և ամ̃ դատաստան քո ճշմարտութ̃ն։ 28 * Եւ իրաւունս ճշմարտութ̃ե արարեր՝ ըստ ամ̃ի զոր արարեր մեզ․ և քաղաքին սրբոյ հարցն մերոց երեմի։ զի ճշմարտութ̃բ՝ և յիրաւի ածեր զայս ամ̃ վ̃ն մեղաց մերոց։ 29 * Զի մեղաք՝ և անօրինեցաք ապստամբ լինիլ ՚ի քէն․ և առաւել մեղաք յամ̃ի։ 30 * Եւ պատուիրանաց քոց ոչ անսացաք․ ոչ պահեցաք՝ և ոչ արարաք՝ որպ̃ս պատուիրեցեր մեզ՝ զի բարի լինիցի մեզ։ 31 * Եւ զամ̃՝ զոր ածեր ՚ի վ̃ր մեր, և զամ̃՝ զոր արարեր մեզ՝ արդար դատաստանաւ արարեր։ 32 * Եւ մատնեցեր զմեզ ՚ի ձեռս թշնամեաց մերոց․ անօրինաց՝ խստաց՝ ապստամբողաց․ և թագաւորի՝ անիրաւի՝ և չարի քան զամ̃ երկիր։ 33 * Եւ արդ՝ ոչ գոյ մեզ բանալ զբերան՝ զի ամօթ՝ և նախատինք եղեաք ծառայից քոց և պաշտօնէից։ 34 * Մի՛ մատներ զմեզ իսպառ վ̃ն անուան քոյ․ և մի՛ ցրեր զուխտ քո։ 35 * Եւ մի՛ ՚ի բացէ առներ զողորմութիւն քո ՚ի մէնջ․ վ̃ն աբրահամու սիրելւոյ քոյ՝ և վ̃ն իսահակայ ծառայի քոյ՝ և վասն իս̃լի սրբոյ քոյ։

36 * Որոց խօսեցար բազմացուցանել զզաւակ նց̃ա իբրև զաստեղս երկնից․ և իբրև զաւազ առ ափն ծովու։ 37 * Եւ արդ Տ̃ր, նուաղեցաք քան զամ̃ ազգս․ և եմք տառապեալք յամ̃ երկրի․ այսօր

ըն̄ մեղաց մերոց ։ 38 * Եւ ոչ գոյ 'ի ժամանակի յայսմիկ իշխան՝ մարգարէ՝ և առաջնորդ ․ ոչ ողջակէզք՝ և ոչ զոհք՝ և ոչ պատարագք՝ և ոչ խունկք ․ և ոչ տեղի տալոյ երախայրիս առաջի քո ։ 39 * Եւ գտանել զողորմութի 'ի քէն ։ այլ անձամբք բեկելովք՝ և հոգւովք տառապանաց ընդունելի լիցուք ։

40 * Իբրև զողջակէզս խոյոց՝ և զուարակաց՝ և իբրև զբիւրաւորս գառանց պարարտից ․ այնպէս եղիցի պատարագս մեր այսօր առաջի քո ․ լինել կատարեալ զկնի քո ․ զի չիք ամօթ յուսացելոց 'ի քեզ ։ 41 * Եւ արդ՝ գամք զհետ քո ամենայն սրտիւք մերովք ․ և երկնչիմք 'ի քէն ․ և խնդրեմք զերեսս քո ։

42 * Մի յամօթ առներ զմեզ ․ այլ արա ընդ մեզ ըստ հեզութե քում ․ և ըստ բազում ողորմութե քում ։ 43 * Եւ փրկեա զմեզ վասն սքանչելեաց քոց ․ և տուր փառս անուան քում Տէր ։

44 * Եւ յամօթ լիցին ամենեքեան՝ որք ցուցանեն չարիս ծառայից քոց ․ և ամաչեսցեն յամ̄ բռնութե իւրեանց ․ և զօրութիւն նոցա խորտակեսցի ։

45 * Եւ ծանիցեն՝ զի դու ես Տր̄ Ա̄ծ միայն ․ և փառաւորեալ 'ի վր̄ ամ̄ տիեզերաց ։ 46 * Եւ ոչ դադարէին՝ որք արկին զնո̄ սպասաւորք թագաւորին՝ 'ի զհնոցն բորբոքելոյ, նաւթիւ և ձիւթով ․ և վշով՝ և որթով ։ 47 * Եւ ելանէր՝ դիզանայր բոցն 'ի վերոյ քան ըզ հնոցն 'ի քառասուն և յինն կանգուն ։

48 * Եւ շրջէր՝ պատէր շուրջ զհնոցաւն ․ և այրէր՝ զորս գտանէր 'ի քաղդէայւոց անտի ։ 49 * Եւ հրեշտակ Տն̄ էջ եկաց ընդ ազարիանն 'ի հնոցի անդ ․ և թօթափեաց զբոց հրոյն 'ի հնոցէ անտի ։ 50 * Եւ արար 'ի մէջ հնոցին իբրև զհողմ՝ որ ցօղագին շնչիցէ ․ և ոչ մերձենայր ամենևին հուրն 'ի նոսա ․ ոչ տրտմեցուցանէր՝ և ոչ նեղէր զնոսա ։

51 * Յայնժամ երեքեանն իբրև 'ի միոջէ բերանոյ ․ օրհնէին՝ և գովէին՝ և փառաւոր առնէին զԱ̄Ծ և ասէին ։

52 * Օրհնեալ ես Տր̄ Ա̄Ծ հարցն մերոց ․ գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։ և օրհնեալ է անուն ս̄բ փառաց քոց ․ գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։ 53 * Օրհնեալ ես 'ի տաճարի փառաց սրբութե քոյ ․ գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։ 54 * Օրհնեալ ես՝ որ հայիս յանդունդս ․ և նստիս 'ի քերովբէս ․ գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։ 55 * Օրհնեալ ես 'ի վր̄ աթոռոյ արքայութե քոյ ․ գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։ 56 * Օրհնեալ ես՝ 'ի վր̄ հաստատութե երկնից ․ գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեանս ։

57 * Օրհնեցէք ա̄մ գործք Տն̄ զՏր̄ ․ օրհնեցէք՝ և բա́րձր արարէք զնա յաւիտեանս ։ 58 * Օրհնեցէք երկինք զՏր̄ ․ օրհնեցէք ։ (Սաղմ․ 148․ 4․) 59 * Օրհնեցէք հրեշտակք Տն̄ զՏէր ։ 60 * Օրհնեցէք ջուրք ա̄մ, 'ի վերոյ քան զերկինս զՏր̄ ․ (որք 'ի վերոյ) 61 օրհնեցէք և բա́րձր ։ * Օրհնեցէք ա̄մ զօրութիւնք Տն̄ զՏէր ։

62 * Օրհնեցէք արև և լուսին զՏր̄ ։

63 * Օրհնեցէք ա̄մ աստեղք երկնից զՏր̄ ։

64 * Օրհնեցէք ա̄մ անձրևք և ցօղք զՏր̄ ։

65 * Օրհնեցէք ա̄մ հողմք զՏր̄ ․ օրհ ։

66 * Օրհնեցէք հուր և տապ զՏր̄ ․ օրհ ։

67 * Օրհնեցէք ցուրտ և տօթ զՏր̄ ։

68 * Օրհնեցէք եղեամն՝ և ձիւնաբեր զՏր̄ ։ 69 * Օրհնեցէք սառն և պարզ զՏր̄ ։

70 * Օրհնեցէք պաղ և ձիւն զՏր̄ ․ օրհ ։

71 * Օրհնեցէք տիւք և գիշերք զՏր̄ ։

72 * Օրհնեցէք լոյս և խաւար զՏր̄ ․ օրհ ։

73 * Օրհնեցէք ամպք և փայլատակունք զՏր̄ ․ օրհնեցէք և բա́րձր արարէք ։

74 * Օրհնեսցէ երկիր զՏր̄ ․ օրհնե ։

75 * Օրհնեցէք լերինք և բարձունք զՏր̄ ։

76 * Օրհնեցէք ա̄մ բոյսք երկրի զՏր̄ ։

77 * Օրհնեցէք աղբիւրք զՏր̄ ․ օրհնեց ։

78 * Օրհնեցէք ծովք և գետք զՏր̄ ։

79 * Օրհնեցէք կէտք և ա̄մ կայտառք՝ որք 'ի ջուրս զՏր̄ ․ օրհնեցէք և ։

80 * Օրհնեցէք թռչունք երկնից զՏր̄ ։

81 * Օրհնեցէք ա̄մ գազանք՝ և անասունք զՏր̄ ․ օրհնեցէք և բա́րձր արարէք ։

82 * Օրհնեցէք որդիք մարդկան զՏր̄ ։

83 * Օրհնեսցէ Իէլ զՏր̄ ․ օրհնեսցէ ։

84 * Օրհնեցէք քահանայք զՏր̄ ․ օրհ ։

85 * Օրհնեցէք ծառայք Տն̄ զՏր̄ ։

86 * Օրհնեցէք հոգիք և շունչք արդարոց զՏր̄ ։ 87 * Օրհնեցէք ս̄բք և խոնարհք սրտիւք զՏր̄ ․ օրհնեցէք և ։

88 * Օրհնեցէք անանիա՝ ազարիա՝ և միսայէլ զՏր̄ ․ օրհնեցէք՝ և բա́րձր արարէք զնա յաւիտեանս ։ զի փրկեաց զմեզ 'ի դժոխոց՝ և 'ի ձեռաց մահու ապրեցոյց զմեզ ․ և փրկեաց զմեզ 'ի հնոցէս ․ և 'ի միջոյ բորբոքեալ բոցոյս ․ և 'ի միջոյ հրոյս փրկեաց զմեզ ։

89 * Գոհացարուք զՏէ՛ր զի քաղցր է՝ զի 90 յաւիտեան է ողորմ̄ նր̄ ։ * Օրհնեցէք ա̄մ պաշտօնեայք Տն̄ զԱ̄Ծն աստուածոց ։ օրհնեցէք՝ և գոհացարուք՝ զի յաւիտեան է ողորմ̄ նր̄ ։ 91 * Եւ նաբուգոդոնոսոր իբրև լուաւ զօրհնութի նց̄՝ զարմացաւ ։ յարեաւ տագնապաւ՝ և ասէ ցմեծամեծս իւր ։ ո՞չ արս երիս կապեալս արկաք 'ի մէջ հրոյն ։ և ասեն ցթագաւորն ․ այո, արդար ասես արքայ ։ 92 * Եւ ասէ թագաւորն ․ այլ ես

տեսանեմ արս չորս արձակս . և գնան
'ի մէջ հրոյն . և ապականութիւն ինչ ոչ
գոյ 'ի նս ։ և տեսիլ չորրորդին նման է
որդւոյ ԱՅ ։ * Յայնժամ մատեաւ նա 93
բուգոդոնոսոր 'ի դուռն հնոցի հրոյն
բորբոքելոյ . և ասէ , սեդրաք՝ միսաք՝
և աբեդնագով . ծառայք այ բարձրե_
լոյ . ելէք՝ և եկայք ։ և ելին սեդրաք՝
միսաք՝ և աբեդնագով 'ի միջոյ հրոյն ։
* Եւ ժողովեցան նախարարքն՝ և զօ_ 94
րավարք՝ և կուսակալք՝ և զօրաւորք
թագաւորին . և տեսանէին զարսն . զի
ոչ տիրեաց հուրն 'ի մարմինս նց . և հեր
գլխոյ նց ոչ խանձատեցաւ . և վարտիք
նց ոչ այլագունեցան . և հոտ հրոյ ոչ
գոյր 'ի նոսա ։ * Եւ երկիր եպագ թա 95
գաւորն առաջի նց Տն . և պատասխա
նի ետ նաբուգոդոնոսոր՝ և ասէ ։ օրհ_
նեալ ԱԾ սեդրաքայ՝ միսաքայ՝ և ա_
բեդնագովի . որ առաքեաց զհրեշտակ
իւր՝ և փրկեաց զծառայս իւր . զի յու
սացան 'ի նա՝ և զբան թագաւորին
անարգեցին . և մատնեցին զմարմինս
իւրեանց 'ի հուր . զի մի պաշտեսցեն՝
և մի երկիրպագցեն ամ աստուծոյ .
բայց միայն ԱՅ իւրեանց ։ * Եւ արդ՝ 96
ես տամ հրաման ։ ամ ազգք՝ և ազինք՝
և լեզուք . որք խօսիցին հայհոյութիւն
զայ սեդրաքայ՝ միսաքայ՝ և աբեդնա_
գովի՝ 'ի կորուստ մատնեսցին . և տունք
նց 'ի յափշտակութիւն . զի ոչ գոյ այլ ԱԾ՝
որ կարօղ իցէ այնպէս փրկել ։ * Յայն_ 97
ժամ թագաւորն առաւել շքեղացոյց
զսեդրաք՝ զմիսաք՝ և զաբեդնագով
յերկրին բաբիլացւոց . և բարձրացոյց
զնս . և աղաչեաց լինել նց իշխան ամ
հրէիցն՝ որք էին 'ի թագաւորութեան նր ։
* Նաբուգոդոնոսոր արքայ ։ առ ամ 98
ազգս և լեզուս՝ որք բնակեալ են յամ
երկրի . խաղաղութիւն բազմասցի 'ի ձեզ ։
* Զնշանս և զարուեստս՝ զոր արար 99
ընդ իս բարձրեալն . հաճոյ թուեցաւ
առաջի իմ պատմել ձեզ ։ * Թէ որչ 100
մեծամեծք՝ և զօրաւորք են . արքայու
թիւն նր՝ արքայութիւն յաւիտենից . ‖ և
իշխանութիւն նր յազգաց յազգս ։

‖ Ս այր. 4.31. և 7.14.

## Գ Լ ։ Դ ։

### Տեսիլ Հինգերորդ ։

Ես նաբուգոդոնոսոր ուրախ էի 'ի 1
տան իմում . և զուարճացեալ ։
* Երազ տեսի . և զարհուրեցոյց զիս . 2
և խռովեցայ յանկողնի իմում . և տե
սիլ գլխոյ իմոյ տագնապեաց զիս ։
* Եւ տուաւ հրաման յինէն ածել 3
առաջի իմ զամ իմաստունս բաբիլաց
ւոյ . զի զմեկնութիւն երազոյն ցուցցեն
4 ինձ ։ * Եւ մտին առաջի իմ գէտք՝ և
մոգք՝ և իղձք՝ և քաղդեայք . և զերազն
ասացի առաջի նց . և զմեկնութիւն նր
5 ոչ ցուցին ինձ ։ * Մինչև եկն դանիէլ՝
որոյ անուն էր բաղտասար՝ ըստ անուան
աստուծոյ իմոյ . զի հոգի սուրբ ԱՅ
6 գոյ 'ի նմա . ցոր ասացի ։ * Թէ բաղտա
սար իշխան գիտաց՝ զոր ես գիտեմ ,
եթէ հոգի սբ այ գոյ 'ի քեզ . և ամ
խորհուրդք ոչ ծածկին 'ի քէն . արդ՝
լուր դու զտեսիլ երազոյն իմոյ՝ զոր
տեսի . և զմեկնութիւն նր ասասցես ինձ ։
7 * Տեսանէի յանկողնի իմում . և ահա
ծառ մի 'ի մէջ երկրի . և բարձրութիւն
8 նր բազում յոյժ ։ * Մեծացաւ ծառն՝
և զօրացաւ՝ և բարձրութիւն նր էհաս
մինչև յերկինս . և լայնութիւն նորա 'ի
9 ծագս ամ երկրի ։ * Տերև նր գեղե_
ցիկ . և պտուղ նր բազում . և կերա_
կուր ամ 'ի նմա . 'ի ներքոյ նորա բնա_
կեալ էին գազանք վայրի . և յոստս նր
հանգուցեալ էին թռչունք երկնից . և
'ի նմանէն կերակրիւր ամ մարմին ։
10 * Տեսանէի 'ի տեսլեան գիշերոյ յան_
կողնի իմում . և ահա զուարթուն՝ և
11 սուրբ իջանէր յերկնից ։ * Եւ բար_
բառիւր զօրութբ՝ և ասէր այսպէս .
հատէք զծառդ՝ և քշտեցէք զոստս
դորա . թօթափեցէք զտերև դորա՝ և
զպտուղ դորա ցրուեցէք . շարժեսցին
գազանքն 'ի ներքոյ դորա՝ և թռչունքդ
12 յոստոց դորա ։ * Բայց զշառաւիղ
արմատոյ դորա թողէք յերկրի , երկա
թապատ , և պղնձապատ . 'ի դալարի
վայրի և 'ի ցօղ երկնից դադարեսցէ .
և ընդ գազանս բաժին նր . և 'ի խոտ
13 երկրի ։ * Սիրտ նր 'ի մարդկանէ փո_
խեսցի . և սիրտ գազանայ տացի նմա .
և եօթն ժամանակք փոխեսցին 'ի վր
14 նր ։ * Մեկնութբ զուարթնոյ է բանս .
և պատգամ սրբոյ է հարցուածս . զի
ծանիցեն կենդանիքս՝ թէ Տր է բարձ
րեալն թագաւորութեան մարդկան . և
ում կամի, տացէ զնա . և զարհամարհն
'ի մարդկանէ յարուսցէ 'ի վր նորա ։
15 * Այս է երազն՝ զոր տեսի ես նաբու_
գոդոնոսոր արքայ . և դու բաղտասար՝
ասա ինձ զմեկնութիւն նր . զի ամ իմաս
տունք թագաւորութեան իմոյ ոչ կարա
ցին ցուցանել ինձ զմեկնութիւն նորա .
այլ դու դանիէլ կարօղ ես . զի հոգի
16 սուրբ այ գոյ 'ի քեզ ։ * Յայնժամ դա
նիէլ՝ որոյ անուն էր բաղտասար՝ հիա
ցաւ իբրև ժամ մի, և խորհուրդք նր
խռովեցուցանէին զնա . պատասխանի
ետ թագաւորն՝ և ասէ . բաղտասար՝
երազն՝ և մեկնութիւն նր մի տագնապե
ցուսցեն զքեզ ։ ետ պատասխանի բաղ_
տա_

տասար՝ և ասէ . տէ՛ր՝ երազն ատելեաց
քոց՝ և մեկնութիւն նր թշնամեաց քոց :
17 *Ծառն՝ զոր տեսանէիր մեծացեալ՝
և զօրացեալ . որոյ բարձրութիւն հասա
նէր յերկինս՝ և լայնութիւն նորա յա՛մ
երկիր : 18 *Տերև նր գեղեցիկ՝ և պտուղ
նր բազում . և կերակուր ա՛մի 'ի նմա .
'ի ներքոյ նորա բնակեալ էին գազանք
անապատի . և յոստս նր հանգուցեալ
թռչունք երկնից : 19 *Դու ես արքայ .
զի մեծացար՝ և զօրացար՝ և մեծութի
քո բարձրացաւ . և էհաս յերկինս . և
տէրութի քո 'ի ծագս ա՛մ երկրի :
20 *Եւ զի տեսանէիր զզուարթունն՝ և
զսբ՝ իջանէր յերկնից՝ և ասէր . կոր
ցէք զծառդ . և ապականեցէք զդա .
բայց զշառաւիղ արմատոյ դորա թո
ղէք յերկրի՝ երկաթապատ և պղնձա
պատ . և 'ի դալարի վայրի՝ և 'ի ցօղ
երկնից հանգիցէ . և ընդ գազանս ա
նապատի բաժին նր . մինչև եօթն ժա
մանակք փոխեսցին 'ի վր նր : 21 *Այս է
մեկնութի նր . և դատաստանք բարձ
րելոյն են հասեալք 'ի վր տեառն ի
մոյ արքայի : 22 *‖ Եւ զքեզ հալածես
ցեն 'ի մարդկանէ . և ընդ գազանս ա
նապատի եղիցի բնակութի քո . և խոտ
իբրև արջառոյ ջամբեսցեն քեզ . և 'ի
ցօղոյ երկնից հանգիցես . և եօթն ժա
մանակք փոխեսցին 'ի վր քո՝ մինչև
ծանիցես՝ թէ տիրէ բարձրեալն թա
գաւորութե մարդկան . և ում կամի ,
տացէ զնա : 23 *Եւ զի ասաց՝ թէ թո
ղէք զշառաւիղ արմատոյ ծառոյն . թա
գաւորութի քո քեզ մնա՛յ . մինչև ծա
նիցես զիշխանութի երկնաւոր : 24 *Ա՛
այդորիկ արքայ՝ խրատ իմ հաճոյ թուի
եսցի քեզ . ‖ և զմեղս քո ողորմութբ
քաւեսջիր . և զանօրէնութիս քո գթովք
տնանկաց . թերևս երկայնամիտ լիցի
'ի վր յանցանաց քոց Այ : 25 *Այս ա՛մ
եկն՝ էհաս 'ի վր նաբուգոդոնոսորայ
արքայի : 26 *Յետ երկոտասան ամսոյն .
մինչդեռ 'ի վր տաճարին թագաւո
րութե իւրոյ ճեմէր 'ի բաբելոն :
27 *Խօսել սկսաւ թագաւորն՝ և ասէ .
ո՞չ այս այն մեծ բաբելոն է՝ զոր ես շի
նեցի 'ի տուն թագաւորութե . հաս
տատութբ զօրութե 'ի պատիւ փա
ռաց իմոց : 28 *Եւ մինչդեռ բանքն 'ի
բերանն էին թագաւորին , ձայն եղև
յերկնից . քեզ ասի նաբուգոդոնոսոր
արքայ . թագաւորութի քո անցեալ է
'ի քէն : 29 *Եւ 'ի մարդկանէ հալածես
ցեն զքեզ . և ընդ գազանս անապատի
բնակութի քո . և խոտ իբրև արջառոյ
ջամբեսցեն քեզ . և եօթն ժամանակք
փոխեսցին 'ի վերայ քո . մինչև ծանի



ցես՝ թէ տիրէ բարձրեալն թագաւո
րութե մարդկան . և ում կամի, տացէ
զնա : 30 *Նոյնին ժամու բանն կատա
րեցաւ 'ի վր նաբուգոդոնոսորայ . և
'ի մարդկանէ հալածեցաւ . և խոտ իբ
րև արջառ ուտէր . և 'ի ցօղ երկնից
մարմին նր ներկաւ՝ մինչև վարսք նր
իբրև զառիւծուց մեծացան . և եղն
գունք նր իբրև զթռչնոց : 31 *Եւ յետ
կատարածի աւուրցն՝ ես նաբուգոդո
նոսոր զաչս իմ 'ի յերկինս համբարձի .
և միտք իմ առ իս դարձան . և զբարձ
րեալն օրհնեցի . և զկենդանին յաւի
տենից գովեցի՝ և փառաւորեցի . ‖ զի ‖ Սէր. 3. 100.
իշխանութի նր իշխանութի յաւիտե
նական . և տէրութի նր յազգս յազգս :
32 *Եւ ա՛մ բնակիչք երկրի իբրև զոչ
ինչ համարեցան . ըստ կամաց իւրոց
առնէ զօրութե երկնից . և բնակութե
երկրի . և չի՛ք՝ որ ընդդէմ դառնայ ձե
ռին նր . և ասիցէ՝ եթէ զինչ գործե
ցեր : 33 *Նոյնին ժամանակի միտք իմ
առ իս դարձան . և 'ի պատիւ թագա
ւորութե իմոյ եկի . և կերպարանք իմ
առ իս դարձան . և իշխանք իմ՝ և մե
ծամեծք իմ խնդրէին զիս . և անդրէն
'ի թագաւորութի իմ հաստատեցայ .
և մեծութի առաւել յաւելաւ ինձ :
34 *Արդ՝ ես նաբուգոդոնոսոր օրհնեմ,
և առաւել բարձրացուցանեմ, և փա
ռաւորեմ զարքայն երկնից . զի ա՛մ
գործք նորա ճշմարիտք են . և շաւիղք
նր իրաւունք . և զամենեսին՝ որք գնան
ամբարտաւանութբ՝ կարօղ ես խո կարօղ է
նարհեցուցանել :

## ԳԼ : Ե :

1 Բաղտասար արքայ արար ընթրիս
մեծամեծաց իւրոց հազար առն .
և ըստ հազարացն նոյնպէս և գինի . և
իբրև ընդ գինիս եմուտ բաղտասար :
2 *Հրամայեաց բերել զսպաս արծա
թոյ՝ և ոսկւոյ . զոր էհան նաբուգո
դոնոսոր հայր նորա 'ի տաճարէն՝ որ
յեմ . զի արբցեն նոքօք թագաւորն,
և մեծամեծք իւր . և հարճք, և կանայք
3 իւր : *Եւ բերին զսպասն ոսկեղէնս
և արծաթեղէնս . զոր բերեալ էր 'ի
տաճարէն Այ՝ որ էր յեմ . և ըմպէին
նոքօք թագաւորն՝ և մեծամեծք իւր՝
4 և հարճք նր՝ և կանայք : *Ըմպէին
զգինի . և օրհնէին զաստուածս զոսկե
ղէնս՝ և զպղնձիս՝ և զերկաթիս , և
զփայտեղէնս՝ և զքարեղէնս . և զԱծն
յաւիտենից ո՛չ օրհնեցին . որ ունէր
5 զիշխանութի հոգւոց նց : *Նոյնին
ժամու ելին մատունք ձեռին մարդոյ .
և գրէին հանդէպ ջահին 'ի վր բու

լոյ որմոյ տաճարի թագաւորին. և թագաւորն տեսանէր զթաթ ձեռինն՝ որ գրէր ։ 6 *Յայնժամ հատան գոյնք թագաւորին. և խորհուրդք նորա խռովէին զնա՝ և յօդք միջոյ նորա լուծանէին՝ և ծունկք նորա զմիմեանս բաբախէին ։ 7 *Եւ աղաղակեաց թագաւորն զօրութեամբ ածել զմոգս և զքաղդեայս. և զգէտս ։ Եւ ասէ ցիմաստունս բաբելացւոց. որ ընթերցցի զգիրդ զայդ՝ և զմեկնութիւն դորա ցուցցէ ինձ. ծիրանիս զգեցցի՝ և մանեակ ոսկի 'ի պարանոց իւր. և երրորդ 'ի թագաւորութեան իմում տիրեսցէ ։ 8 *Եւ մտանէին ամ իմաստունք թագաւորին. և ոչ կարէին զգիրն ընթեռնուլ. և ոչ զմեկնութիւն նորա ցուցանել թագաւորին ։ 9 *Եւ արքայ բաղտասար խռովեցաւ. և գոյն երեսաց նորա շրջեցաւ. խռովեցան և մեծամեծք նորա ընդ նմա ։ 10 *Եւ եմուտ տիկինն 'ի տաճար խրախութեանն՝ և ասէ. արքայ՝ յաւիտեան կեաց. մի խռովեսցեն զքեզ խորհուրդք քո. և գոյն երեսաց քոց մի եղծցի ։ 11 *Գոյ է այր մի 'ի թագաւորութեան քում, յորում գոյ հոգի սբ այ՝ և յաւուրս հօր քոյ զուարթութիւն՝ և իմաստութիւն գտանէին 'ի նմա. և արքայ նաբուգոդոնոսոր հայր քո՝ իշխան կացոյց զնա 'ի վր գիտաց. և մոգուց՝ և քաղդեայց՝ և ըղձից ։ 12 *Զի հոգի առաւել գոյ 'ի նմա. իմաստութիւն և հանճար. մեկնէ զերազս՝ և պատմէ զառակս. և լուծանէ զկապս կապելոյ՝ դանիէլ. և արքայ՝ բաղտասար անուն եդ նմա. արդ՝ կոչեսցի՝ և զմեկնութիւն դորա պատմեսցէ ։ 13 *Յայնժամ ածին 'ի ներքս զդանիէլ առաջի թագաւորին. և ասէ թագաւորն ցդանիէլ. դու ես դանիէլ յորդւոց գերութեան հրէաստանի. զոր էած նաբուգոդոնոսոր հայր իմ ։ 14 *Լուայ զքէն թէ հոգի այ է 'ի քեզ. և զուարթութիւն և հանճար՝ և իմաստութիւն առաւել գտաւ 'ի քեզ ։ 15 *Եւ արդ՝ աւասիկ մտին առաջի իմ իմաստունք և մոգք՝ և իղձք. զի զգիրդ զայդ ընթեռնուցուն՝ և զմեկնութիւն դորա ցուցցեն ինձ. և ոչ կարացին պատմել ինձ ։ 16 *Եւ ես լուայ զքէն՝ թէ կարող ես մեկնել մեկնութիւնս. և արդ՝ եթէ կարիցես զգիրդ ընթեռնուլ. և զմեկնութիւն դորա ցուցանել ինձ. ծիրանիս զգեցցիս, և մանեակ ոսկի 'ի պարանոցի քում. և երրորդ 'ի թագաւորութեան իմում տիրեսցես ։ 17 *Եւ ասէ դանիէլ առաջի թագաւորին. պարգևք քո քեզ լիցին. և զպատիւ տան քոյ այլում տուր. բայց զգիրդ ես ընթերցայց՝ և զմեկնութիւն դորա ցուցից

քեզ ։ 18 *Ո՛վ արքայ՝ Ած բարձրեալ զմեծութիւն և զթագաւորութիւն և զպատիւ, և զփառս ետ նաբուգոդոնոսորայ հօր քում ։ 19 *Եւ 'ի մեծութենէն՝ զոր ետ նմա, ամ ազգք՝ և ազինք՝ և լեզուք զարհուրեալք դողային յերեսաց նորա. զորս կամէր, հարկանէր. զորս կամէր, սպանանէր. և զորս կամէր ինքն, բարձրացուցանէր. և զորս կամէր ինքն, խոնարհեցուցանէր ։ 20 *Եւ յորժամ բարձրացաւ սիրտ նորա. և ոգի նորա զօրացաւ յամբարտաւանել. անկաւ յաթոռոյ թագաւորութեան իւրոյ. և պատիւն բարձաւ 'ի նմանէ ։ 21 *Եւ 'ի մարդկանէ հալածեցաւ. և սիրտ ընդ գազանս տուաւ նմա. և ընդ ցիռս բնակութիւն նորա. և խոտ իբրև արջառոյ ջամբէին նմա. և 'ի ցօղոյ երկնից մարմին նորա ներկաւ. մինչև ծանեաւ թէ տիրէ բարձրեալն թագաւորութեան մարդկան. և ում կամի, տայ զնա ։ 22 *Եւ արդ՝ դու որդի նորա բաղտասար՝ ոչ խոնարհեցուցեր զսիրտ քո առաջի այ. 23 ուստի զայդ ամ գիտէիր ։ *Եւ ընդդէմ այ երկնից հպարտացար. և զսպաս տան նորա բերին առաջի քո. և դու՝ և մեծամեծք քո՝ հարճք քո՝ և կանայք քո ըմպէին նոքօք զգինի. և զաստուածս զոսկեղէնս՝ և զարծաթեղէնս՝ և զպղնձիս՝ և զերկաթիս՝ և զփայտեղէնս՝ և զքարեղէնս, որք ոչ տեսանեն՝ և ոչ լսեն՝ և ոչ իմանան՝ օրհնէիր. և զԱծ որոյ շունչ քո 'ի ձեռին նորա է՝ և ամ ճանապարհք քո, զնա ոչ փառաւորեցեր ։ 24 *Վա այնորիկ յերեսաց նորա առաքեցաւ թաթ ձեռինն՝ և զգիրդ զայդ գրեաց ։ 25 *Եւ այս ինչ է գիրդ որ գրեալ է. մանէ. թեկէղ. փարէս ։ 26 *Եւ այս է մեկնութիւն բանիդ. մանէ, չափեաց Ած զթագաւորութիւն քո՝ և 27 վախճանեաց զնա ։ *Թեկէղ, կշռեցաւ 28 'ի կշիռս՝ և գտաւ պակասեալ ։ *Փարէս, բաժանեցաւ թագաւորութիւն քո. 29 և տուաւ մարաց՝ և պարսից ։ *Եւ հրամանն ետ բաղտասար՝ և զգեցուցին նմա ծիրանիս. և մանեակ ոսկի 'ի պարանոց ։ և քարոզ կարդային առաջի նորա լինել իշխան երրորդ 'ի թագաւորութեան 30 նորա ։ *Եւ 'ի նմին գիշերի սպանաւ բաղ31 տասար՝ արքայ քաղդէացւոց ։ *Եւ դարեհ արքայ էառ զթագաւորութիւնն. որ էր ամաց վաթսուն և երկուց ։

## ԳԼ. Զ.

1 Եւ հաճոյ թուեցաւ առաջի դարեհի. և կացոյց 'ի վր թագաւորութեանն նախարարս՝ հարիւր և քսան. զի 2 իցեն յամ թագաւորութեան նորա ։ *Եւ 'ի նոցա վր երիս հրամանատարս. և մի 'ի

նոցա_

նոցանէ էր դանիէլ. տալ նց նախարարացն հրաման. զի արքայ աշխատ ինչ մի լիցի։ *3 Եւ դանիէլ առաւել էր քան զնս. զի հոգի առաւել գոյր 'ի նմա։ *4 Եւ թագաւորն կացոյց զնա 'ի վ̄ր ա̄մ արքայութե իւրոյ։ և հրամանատարքն և նախարարքն նախանձէին՝ և խնդրէին պատճառս զդանիէլէ. և ամենևին պատճառս՝ և յանցանս՝ և բաղբաղյս ոչ գտանէին զնմանէ. քանզի հաւատարիմ էր։ *5 Եւ ասեն հրամանատարքն. չգտանեմք ուստէք պատճառս զդանիէլէ. բայց եթէ յօրէնս այ իւրոյ։ *6 Յայնժամ հրամանատարքն և նախարարքն կացին առաջի թագաւորին՝ և ասեն ցնա։ դարեհ արքայ՝ յաւիտեան կեաց։ *7 Խորհուրդ արարին ամենեքեան՝ որք էին 'ի թագաւորութե քում. զօրավարք՝ և նախարարք՝ իշխանք՝ և կուսակալք՝ հաստատել արքունի հաստատութ. և զօրացուցանել ուխտ մի. զի եթէ խնդրեսցէ ոք խնդրուածս յա̄մ աստուծոյ՝ կամ 'ի մարդոյ՝ մինչև յաւուրս երեսուն՝ բաց 'ի քէն ո՛րքայ, անկցի 'ի գուբ առիւծուց։ *8 Արդ՝ հաստատեա ո՛րքայ զուխտն. և գրեա զգիր. զի մի եղծանիցի հրաման պարսից և մարաց։ *9 Յայնժամ դարեհ արքայ պատուէր ետ գրել զհրամանն։ *10 Եւ դանիէլ իբրև գիտաց՝ թէ կարգեցաւ հրամանն, եմուտ 'ի տուն իւր՝ և պատուհանք բաց էին նմա 'ի վերնատունս իւր ընդդէմ եՀմի. և երիս ժամս յաւուրն դնէր ծունր՝ և կայր յաղօթս. և գոհանայր առաջի այ իւրոյ. ո՛պ առնէր յառաջագոյն։ *11 Յայնժամ արքն այնոքիկ դիտացին՝ և գտին զդանիէլ՝ զի կայր յաղօթս. և աղաչէր զՏ̄ծ իւր։ *12 Մատեան, և ասեն ցթագաւորն. ո՛րքայ՝ ո՞չ ուխտ մի կարգեցեր. զի ա̄մ մարդ՝ որ խնդրիցէ խնդրուածս յա̄մ այ՝ կամ 'ի մարդոյ մինչև յաւուրս երեսուն. բաց եթէ 'ի քէն արքայէ. անկցի 'ի գուբ առիւծուց։ և ասէ արքայ՝ ճշմարիտ է բանդ. զհրաման մարաց և պարսից չէ օրէն շրջել։ *13 Յայնժամ պատասխանի ետուն արքային՝ և ասեն. դանիէլ որ յորդւոց գերութեն հրէաստանի. ոչ հնազանդեցաւ հրամանի քում. և երիս ժամս խնդրէ խնդրուածս յայ իւրմէ։ *14 Յայնժամ թագաւորն իբրև լուաւ զբանն՝ տրտմեցաւ յոյժ։ և վ̄ս դանիէլի ջանայր փրկել զնա։ *15 Յայնժամ արքն այնոքիկ ասեն ցթագաւորն. գիտասջիր արքայ՝ զի հրամանի մարաց՝ և պարսից՝ և ա̄մ ուխտի և հաստատութե՝ զոր արքայ հաստատեսցէ. ոչ է օրէն շրջել։ *16 Յայնժամ հրաման ետ թագաւորն՝ և ածին զդանիէլ. և արկին զնա 'ի գուբն առիւծուց։ և ասէ արքայ ցդանիէլ։ Ա̄ծ զոր դու պաշտես, նա փրկեսցէ զքեզ։

*17 Եւ բերին վէմ մի և եդին 'ի վերայ դբոյն. և կնքեաց թագաւորն մատանեաւ իւրով. և մատանեօք մեծամեծացն. զի մի այլ ազգ ինչ իրք շրջիցին վ̄ս դանիէլի։ *18 Եւ գնաց թագաւորն 'ի տուն իւր. և ննջեաց առանց ընթրեաց. և խորտիկ ոչ մուծին առաջի նր. և քուն հատաւ 'ի նմանէ։ Եւ էփակ Ա̄ծ զբերանս առիւծուցն. և ոչ լլկեցին զդանիէլ։ *19 Յայնժամ յարեաւ արքայն ընդ առաւօտս լուսով՝ և փութով եկն 'ի գուբն առիւծուց։ *20 Իբրև մերձեցաւ 'ի գուբն, աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ և ասէ։ դանիէլ ծառայ այ կենդանւոյ. Ա̄ծն քո զոր դու յաճախ պաշտէիր, եթէ կարա՞ց փրկել զքեզ 'ի բերանոյ առիւծուցդ։ *21 Եւ ասէ դանիէլ ցարքայ. ո՛րքայ յաւիտեան կեաց։ *22 ‖ Ա̄ծ իմ առաքեաց զհրեշտակ իւր՝ և էփակ զբերանս առիւծուցս. և ոչ ապականեցին զիս. առաջի նր ուղղութի գտաւ իմ. և առաջի քո արքայ վնաս ինչ ոչ արարի։ *23 Յայնժամ թագաւորն զուարճացաւ յանձն իւր. և հրաման ետ հանել զդանիէլ 'ի գբոյ անտի։ հանաւ դանիէլ 'ի գբոյ անտի. և ամենևին ապականութի ինչ ոչ գտաւ 'ի նմա։ զի հաւատաց յԱ̄ծ իւր։ *24 Եւ հրաման ետ թագաւորն՝ և ածին զարսն չարախօսս զդանիէլէ. և 'ի գուբն առիւծուց ընկեցան. ինքեանք և որդիք իւրեանց, և կանայք նց. և չև էին յատակս դբոյն հասեալ, մինչև տիրեցին նց առիւծքն, և զա̄մ ոսկերս նց մանրեցին։ *25 Յայնժամ դարեհ արքայ գրեաց առ ա̄մ ազգս՝ և ազինս՝ և լեզուս. որք բնակեալ էին յա̄մ երկրի։ խաղաղութի ձեզ բազմասցի։ *26 Յերեսաց իմոց եդաւ հրամանս յա̄մ իշխանութե թագաւորութե իմում. զի երկնչիցին՝ և դողասցեն յերեսաց Ա̄յն դանիէլի. զի նա է Ա̄ծ կենդանի՝ և կայ յաւիտեանս. և արքայութի նր ոչ եղծանի. և տէրութի նորա մինչև ցվախճան։ *27 Օգնական լինի, և փրկէ, և առնէ նշանս յերկինս և յերկրի. որ փրկեաց զդանիէլ 'ի բերանոյ առիւծուցն։ *28 ‖ Եւ դանիէլ յաջողէր 'ի թագաւորութեն դարեհի՝ և կիւրոսի։

‖ 1. Մակ 2. 60.

‖ Մէր. 1. 21.

## Գլ: Է։

1 Յամին առաջնորդի բաղտասարայ արքայի քաղդէացւոց. երազ ետես դանիէլ. և տեսիլ գլխոյ նր յանկողնի

կողնի իւրում. և զերազն գրեաց։
2 * Ես դանիէլ տեսանէի 'ի տեսլեան գիշերոյ՝ և ահա չորք հողմք երկնից բաղխէին զծովն մեծ։ 3 * Եւ չորք գազանք մեծամեծք ելանէին 'ի ծովէ անտի այլակերպք 'ի միմեանց։ 4 * Առաջինն իբրև զմատակ առիւծ թևաւոր և թևք նր իբրև արծուոյ. հայէի մինչև թափեցան թևք նորա՝ և ջնջեցաւ յերկրէ։ և եկաց իբրև 'ի վերայ ոտից մարդոյ՝ և սիրտ մարդոյ տուաւ նմա։
5 *Եւ ահա երկրորդ գազանն նման արջոյ. և եկաց 'ի կողմն մի. և կողք երեք 'ի բերան նր՝ 'ի մէջ ժանեաց նորա։ և այսպէս ասէին ցնա. արի, կեր զմարմինս բազմաց։ 6 *Եւ զկնի նր հայէի. և ահա այլ գազան իբրև զինձ. և չորք թևք թռչնոյ 'ի վր նր. և չորք գլուխք գազանին. և իշխանութի տուաւ նմա։
7 *Եւ զկնի նր հայէի. և ահա գազանն չորրորդ՝ ահեղ՝ և զարմանալի՝ և հզօր առաւել. և ժանիք նորա երկաթիք. ուտէր՝ և մանրէր՝ և զմնացորդսն առ ոտն կոտորէր։ և նքն առաւել այլակերպ քան զամ գազանսն՝ որք յառաջ քան զնա։ և եղջիւրք տասն 'ի նմա։
8 *Պշուցեալ հայէի ընդ եղջիւրս նր. և ահա այլ եղջիւր փոքրիկ ելանէր 'ի մէջ նց. և երեք եղջիւրք յառաջնոցն 'ի բաց խլէին յերեսաց նր. և ահա աչք իբրև զաչս մարդոյ յեղջերին յայնմիկ. և բերան նորա խօսէր զմեծամեծս։
9 [աթոռնեբն] *Տեսանէի, մինչև աթոռք անկանէին. և հինաւուրցն նստէր. հանդերձ նր սպիտակ իբրև զձիւն՝ և հեր գլխոյ նորա իբրև զասր ոչ. աթոռ նր իբրև զբոց հրոյ. անիւք նր իբրև հուր բորբոքեալ։
10 [‖Յայտ. 5.11.] * ‖Գետ հրոյ յորդեալ ելանէր առաջի նր։ հազարք հազարաց պաշտէին զնա. և բիւրք բիւրուց կային առաջի նորա. ատեան նստաւ՝ և դպրութիք բացան։
11 *Տեսանէի յայնժամ 'ի բարբառոյ մեծամեծ բանիցն. զոր եղջիւրն այն խօսէր. մինչև բարձաւ գազանն՝ և կորեաւ. և մարմին նր տուաւ յայրումն հրոյ։ 12 *Եւ այլոց գազանաց իշխանութի փոխեցաւ. և երկայնութի կենաց տուաւ նց մինչև 'ի ժամանակս՝ և 'ի ժամանակս։ 13 *Տեսանէի 'ի տեսլեան գիշերոյ՝ և ահա ընդ ամպս երկնից իբրև որդի մարդոյ գայր. և հասանէր մինչև 'ի հինաւուրցն. և մատուցաւ առաջի նր։ 14 *Եւ նմա տուաւ իշխանութի՝ և պատիւ և արքայութի։ և ամ ազգք՝ և ազինք՝ և լեզուք նմա ծառայեսցեն։ [‖Ղուկ. 1.32. Միք. 4.7.] ‖իշխանութի նր իշխանութի յաւիտենական՝ որ ոչ անցանէ. և թագաւորութի նր ոչ եղծանիցի։ 15 *Սոսկացաւ մար մին իմ յանձին իմում. ես դանիէլ՝ և տեսիլ գլխոյ իմոյ խռովեցոյց զիս։ [‖Եր. 3.100.]
16 *Մատեայ առ մի ոմն՝ որք կային անդ. և զճշմարտութի խնդրէի ուսանել՝ վն ամի այնորիկ։ և ասաց ինձ զճշմարտութիւն. և զմեկնութի բանիցն եցոյց ինձ։
17 *Այդ գազանք մեծամեծք՝ չորք թագաւորութիք յարիցեն 'ի վր երկրի։
18 *Բարձցին։ և առցեն զթագաւորութիւն սրբք բարձրելոյն. և կալցին զնա մինչև յաւիտեանս յաւիտենից։
19 *Եւ քննէի ճշմարտիւ վն գազանին չորրորդի. զի առաւել այլակերպ էր քան զամ գազանսն՝ և ահագին յոյժ. և ժանիք նր երկաթիք. և մագիլք նր պղնձիք. ուտէր՝ և մանրէր՝ և զմնացորդսն առ ոտն կոտորէր։
20 *Եւ վն եղջերացն տասանց, որք 'ի գլուխ նր. և վն միւսոյն, որ ելանէր՝ և զերիսն 'ի բաց թափէր. որոյ աչք էին՝ և բերան նր խօսէր զմեծամեծս. և տեսիլ նր առաւել էր քան զայլոցն։
21 *Տեսանէի, զի եղջիւրն այն տայր պատերազմ ընդ սրբս. և զօրանայր 'ի վր նց։
22 *Մինչև եկն հինաւուրցն՝ և ետ իրաւունս սրբոց բարձրելոյն։ ժամանակ էհաս. և զարքայութին սրբք ըմբռնեցին։
23 *Եւ ասէ, գազանն չորրորդ՝ թագաւորութի չորրորդ կայցէ յերկրի. որ առաւել իցէ քան զամ թագաւորութի. և կերիցէ զամ երկիր.
24 և կոխիցէ, և հարցէ զնա։ *Եւ տասն եղջիւրք նր՝ տասն թագաւորք յարիցեն. և զկնի նր յարիցէ այլ. որ առաւել է չարեօք քան զամ առաջինսն. և զերիս թագաւորս խոնարհեցուսցէ։
25 *Եւ բանս առ բարձրեալն խօսեսցի. և զսուրբս բարձրելոյն մոլորեցուսցէ. և կարծեսցէ զժամանակս՝ և զօրէնս փոփոխել. և տացի 'ի ձեռս նր մինչև 'ի ժամանակ՝ և 'ի ժամանակս՝ և 'ի կէս ժամանակաց։
26 *Ատեան նստցի. և զիշխանութի նր փոխեսցեն՝ յապականել մինչև իսպառ։
27 *Եւ թագաւորութի և մեծութի թագաւորաց՝ որ 'ի ներքոյ ամ երկնից՝ տուաւ սրբոց բարձրելոյն. և արքայութի նր արքայութի յաւիտենական. և ամ իշխանութիք նմա ծառայեսցեն, և հնազանդեսցին։
28 *Մինչև ցայս վայր է վախճան բանիս։ ես դանիէլ՝ և խորհուրդք իմ յոյժ խռովեցուցանէին զիս. և գոյն իմ շրջեցաւ. և զբանն 'ի սրտի իմում պահէի։

## ԳԼ։ Ը։

1 Յամին երրորդի թագաւորութեն բաղտասարայ արքայի տեսիլ երևեցաւ ինձ։ ես դանիէլ յետ տեսլեանն առաջնոյ։ 2 *Եւ 'ի շօշայ յապա-

րանս

բանս՝ որ է յերկրին եղամայ. և կայի՛ ի վր̃ ուբաղայ: *Համբարձի զաչս իմ և 3 տեսի. և ահա խոյ մի կայր հանդէպ ուբաղայ: և եղջիւրք նր̃ բարձունք. և մին բարձրագոյն էր քան զմիւսն: և որ բարձրն էր՝ յետոյ ելանէր: *Տեսանէի 4 զխոյն՝ զի ոգորէր ընդ ծով՝ և ը̃ հիւսիսի՝ և ը̃ հարաւ. և ա̃մ գազանք ոչ կային առաջի նր̃. և չէր՝ որ ապրէր՛ ի ձեռաց նր̃: և առնէր ըստ կամաց իւրոց՝ և մեծանայր: *Եւ ես՛ ի միտ դնէի. և ահա 5 քօշ մի այծեաց գայր ընդ երեսս երկրի՝ և յերկիր ոչ մերձենայր. և քօշին եղջիւր մի էր՛ ի մէջ աչաց նր̃: *Եւ եհաս 6 մինչև ցխոյն եղջերաւոր՝ զոր տեսանէի. զի կայր հանդէպ ուբաղայ. և յարձակեցաւ՛ ի վր̃ նր̃ զօրութ̃ ուժոյ իւրոյ: *Եւ տեսանէի զնա հասեալ մինչև 7 ցխոյն: զայրացաւ՝ և եհար զխոյն՝ և խորտակեաց զերկոսեան եղջիւրս նր̃. և ոչ գոյր զօրութ̃ի խոյին ունիլ զդէմ նր̃. եհարկ զնա յերկիր՝ և ոտից իւրոց կոխան առնէր զնա. և ոչոք էր՝ որ թափէր զխոյն՛ ի ձեռաց նր̃: *Եւ քօշն այ- 8 ծեաց մեծացաւ յոյժ. և՛ ի զօրանալ նր̃ խորտակեցաւ եղջիւր նր̃ մեծ: և ելին այլ չորք եղջիւրք՛ ի ներքոյ նր̃՝ ը̃ չորս հողմն երկնից: *Եւ միոյ՛ ի նոցանէ ել 9 եղջիւր մի հզօր: և մեծացաւ առաւել ընդ հիւսիսի: *Եւ առ զօրութ̃ն բարձ- 10 րացաւ մինչև՛ ի զօրութ̃իս երկնից: և ընկէց յերկիր՛ ի զօրութ̃է երկնից՝ և յաստեղաց. և կոխեաց զն̃ս: *Մինչև 11 զօրավարն փրկեսցէ զգերութ̃ին. և նովաւ պատարագք խռովեցան. և եղև՝ և յաջողեցաւ նմա. և սրբութ̃ին աւերեսցի: *Եւ տուան՛ ի վր̃ պատարա- 12 գացն մեղք. և անկաւ յերկիր արդարութ̃ի: և արար՝ և յաջողեցաւ: *Եւ 13 լուայ՛ ի միոջէ սրբոյ՝ որ խօսէր. և ասէ սը̃ մի ցփեղմոնին՝ որ խօսէր: մինչև յե՞րբ տեսիլդ այդ կացցէ: պատարագք բարձեալք. և մեղքդ աւերածի տուեալք. և սրբութ̃իդ կոխիցի: *Եւ ասէ 14 ցնա՝ մինչև յերեկոյ և՛ ի վաղորդեայն. աւուրս երկուս հազարս և երեքհարիւր: և սրբեսցի սրբութ̃ին: *Եւ եղև 15 իբրև տեսի ես դանիէլ զտեսիլն՝ և խնդրէի խելամուտ լինիլ. և ահա առաջի իմ եկաց իբրև զտեսիլ մարդոյ: *Եւ 16 լուայ զբարբառ մարդոյ՛ ի միջոյ ուբաղայ: և կոչեաց՝ և ասէ. գա՛բրիէլ՝ իմա ցնմա զտեսիլդ: *Եւ եկն, եկաց՝ ուր 17 եսն կայի: և՛ ի գալ նր̃՝ յիմարեցայ, և անկայ՛ ի վր̃ երեսաց իմոց: և ասէ ցիս, ՛ի միտ առ որդի մարդոյ՝ զի տակաւին ՛ի ժամանակս վախճանի է տեսիլդ: *Եւ մինչդեռ խօսէր նա ընդ իս, յիմա- 18 րեցայ, և անկայ՛ ի վր̃ երեսաց իմոց յերկիր. և բուռն եհար զինէն՝ և կա- ցոյց՛ ի վր̃ ոտից իմոց: *Եւ ասէ ցիս՝ 19 ահաւասիկ ես ցուցից քեզ՝ որինչ լինելոց է՛ ի վախճանի՛ ի վր̃ երկրի: քանզի տակաւին՛ ի ժամանակս է վախճանն: *Խոյն՝ զոր տեսանէիր եղջերաւոր՝ թա- 20 գաւորն պարսից և մարաց է: *Եւ քօշն 21 յայծեաց՝ թագաւորն յունաց է: և եղջիւրն մեծ՝ որ էր՛ ի մէջ աչացն նր̃, նոյն ինքն է թագաւոր առաջին: *Եւ 22 խորտակիլ նր̃՝ ընդ որոյ ելին այլք եղջիւրքն, չորք թագաւորք յազգէ նր̃ յարիցեն, և ոչ իւրո̃ զօրութ̃: *Եւ 23 յետ թագաւորութե̃ նց̃՛ ի կատարիլ մեղաց նց̃՝ յարիցէ թագաւոր ժպիրհ երեսօք յառակս խորհրդական: *Եւ 24 հզօր զօրութ̃ի նր̃. և զսքանչելիսն ապականեսցէ. և յաջողեսցի, և արասցէ. և ապականեսցէ զհզօրս և զժողովրդն սը̃: *Եւ լուծ ծանրոյ նր̃ յաջողեսցի: 25 և նենգութ̃ի՛ ի ձեռս նր̃. և՛ ի սրտի իւրում մեծամտեսցի: և նենգութ̃ ապականեսցէ զբազումս: և կորստեան բազմաց կայցէ: *Եւ տեսիլն երեկորին՝ և 26 առաւօտին՝ որ ասացաւ՝ ճշմարիտ է. և դու կնքեա՛ զտեսիլդ՝ զի յաւուրս բազումս է: *Եւ ես դանիէլ՛ ննջեցի՝ և 27 խօթացայ. և յարեայ՝ և գործեցի զգործ արքունի. և զարմացեալ էի ընդ տեսիլն: և ոչոք էր, որ իմացուցանէր:

## Գլ: Թ:

Յամին առաջնորդի դարեհի որդւոյ արշաւրայ.՛ ի զաւակէ մարաց՝ 1 որ թագաւորեաց՛ ի թագաւորութե̃ քաղդէացւոց: *Ես դանիէլ խելամուտ եղէ ‖՛ի գիրս թուո՛յ ամացն՝ որ 2 եղև բան Տն̃ առ երեմիայ մարգարէ.՛ ի կատարումն աւերածոյն եօթն յամս եօթանասուն: *Եւ դարձուցի զերեսս 3 իմ առ Տր̃ Ա̃ծ իմ՝ խնդրել աղօթիւք՝ և խնդրուա՛ծօք. պահօք՝ և խորգով: *Կացի յաղօթս առ Տր̃ Ա̃ծ դոհացայ, 4 և ասեմ: ‖Տր̃ Ա̃ծ մեծդ և սքանչելի: որ պահես զուխտ՝ և զողորմութ̃ի սիրելեաց քոց. և որոց պահեն զպատուիրանս քո: *‖Մեղաք՝ անօրինեցաք՝ ա- 5 նիրաւեցաք՝ ապստամբեցաք՝ և խոտորեցաք՛ ի պատուիրանաց քոց՝ և յիրաւանց քոց: *Եւ ոչ լուաք ծառայից քոց 6 մարգարէիցն. որք խօսէին յանուն քո առ թագաւորսն մեր՝ և առ իշխանս մեր՝ և առ հարսն մեր՝ և առ ա̃մ ժողովուրդ երկրին: *Քո Տր̃ արդարութի, 7 և մեր ամօթ երեսաց իբրև յաւուր յայսմիկ առն յուդայ՝ և բնակչաց եր̃մի և ա̃մ իէլի՝ մերձաւորաց՝ և հեռաւորաց

‖ Երեմ. 25. 11. և 29. 10

‖ 3. Եզր 1. 5.

‖ Բար. 1. 17.

րաց յամ երկրի . ուր ցրուեցեր զնոսա
անդր վս անհնազանդութե իւրեանց՝
զոր անհնազանդեցան քեզ : * Տր, մեզ 8
ամօթ երեսաց մերոց՝ և թագաւորաց
մերոց՝ և իշխանաց մերոց՝ և հարց մե_
րոց՝ որք մեղան : * Եւ Տն Ա.Ծ մերոյ 9
գթութիք՝ և քաւութիք . զի ապստամբ
եղաք 'ի Տէ : * Եւ ոչ լուաք ձայնի 10
Տն Ա.Ծ մերոյ . գնալ յօրէնս նր՝ զոր
ետ առաջի մեր 'ի ձեռն ծառայից իւր
ոց մարգարէից : * Եւ ամ իէլ անցին 11
զօրէնօք քով՝ և խոտորեցան . զի մի՛
լուիցեն ձայնի քում : և եկին 'ի վերայ
անէծք . և երդումն գրեալ յօրէնս մո_
վսէսի ծառայի քոյ Տր . զի մեղաք նմա :
* Եւ հաստատեաց զբան իւր՝ զոր խօ_ 12
սեցաւ 'ի վր մեր՝ և 'ի վր դատաւորաց
մերոց . որք դատէին զմեզ . ածել 'ի վր
մեր չարիս մեծամեծս . որք ոչ եղեն
'ի ներքոյ ամ երկնից՝ ըստ այսմ, որք եղեն
յեմ : * ‖ Որպէս և գրեալ է յօրէնսն մովսէ 13
սի . այն ամ չարիք եկին 'ի վր մեր . և
ոչ աղաչեցաք զերեսս Տն Ա.Ծ մերոյ՝
դառնալ յանիրաւութեց հարցն մերոց .
և խելամուտ լինիլ ամ ճշմարտութե
քում : * Եւ զարթեաւ Տր Ա.Ծ մեր 'ի 14
վր չարեացն մերոց՝ և եած զնս 'ի վր
մեր . զի արդար է Տր Ա.Ծ մեր 'ի վր ամ
գործոց իւրոց՝ զոր արար ընդ մեզ : զի
ոչ լուաք ձայնի նր : * ‖ Եւ արդ՝ Տր ած 15
մեր ‖ որ հաներ զժողովուրդ քո յերկ_
րէն եգիպտացւոց հզօր ձեռամբ . և
արարեր քեզ անուն նոր՝ ըստ և յաւուր
յայսմիկ : մեղաք՝ և անօրինեցաք : * Տր 16
ամ ողորմութե քով դարձցի սրտմտու_
թի քո՝ և բարկութիւն քո 'ի քաղաքէ
քումմէ յեմէ՝ և 'ի լեռնէ սրբոյ քոյ ,
զի մեղաք : Եւ առ անօրէնութե մերում,
և հարցն մերոց . եմ և ամ ժողովուրդ
քո եղև 'ի նախատինս ամենեցուն՝ որք
շուրջ զմեօք են : * Եւ արդ՝ լուր Տր ած 17
մեր աղօթից ծառայի քոյ՝ և խնդրուա
ծոյ . և երևեցո զերեսս քո վս քո 'ի սր
բութի քո, որ աւերեցաւ : * Խոնարհեցո 18
Ա.Ծ իմ զունկն քո՝ և լուր ինձ . բաց
զաչս քո՝ և տես զապականութի մեր .
և զքաղաքին քոյ , յորոյ վր է անուն
քո : զի ոչ առ արդարութեց մերոց ար
կանեմք զգութ մեր առաջի քո . այլ վս
բազում գթութե քոյ Տր : * Լուր Տր՝ 19
քաւեա Տր՝ անսա Տր . և մի յամեր վս
քո՝ Ա.Ծ իմ . զի անուն քո կոչեցեալ է 'ի
վր քաղաքին քոյ (Ա.Ծ) : * Մինչդեռ 20
ես խօսէի՝ և յաղօթս կայի . և խոստո_
վան լինէի զմեղս իմ . և զմեղս ժողովր
դեանն իղի . արկանէի զգութս իմ ա_
ռաջի Տն Ա.Ծ իմոյ : * Եւ մինչդեռ խօ 21
սէի յաղօթս , և ահա այրն Գաբրիէլ

'ի Ղւ Մր
ծառայէն
Այ . Վէ
‖ 2. Օրէ 27.14.
‖ Բար. 2. 11.
‖ Ելից. 14.22.

զոր տեսանէի յառաջնումն տեսլեանն .
թռուցեալ մերձեցաւ առ իս՝ իբրև 'ի
22 ժամ երեկորին պատարագի : * Եւ
խելամուտ արար զիս՝ և խօսեցաւ ընդ
իս՝ և ասէ . դանիէլ՝ այժմ եկի խելա_
23 մուտ առնել զքեզ : * Ի սկզբան աղօ
թից քոց . ել պատգամ և ես եկի պատ
մել քեզ . զի այր ցանկալի ես դու . արդ
ած զմտաւ զբանդ . և 'ի մի տես զտե
24 սիլդ : * ‖ Եօթանասուն եօթներորդք
համառօտեցան 'ի վր ժողովրդեան
քոյ . և 'ի վր քաղաքին սրբոյ : 'ի վախ_
ճանել մեղաց . և 'ի կնքել անօրէնու_
թեց . և 'ի ջնջել անիրաւութեց . և 'ի
քաւել ամպարշտութեց . և 'ի գալ յաւի_
տենական արդարութե : և 'ի կնքել
տեսլեան և մարգարէի . և յօծանել սր_
25 բութեցն : * Գիտասցես՝ և խելամուտ
լիցիս . յելից բանին տալ պատասխանի .
և 'ի շինելն եմի, մինչև յօծեալն առաջ
նորդ՝ եօթներորդք եօթն : և եօթնե_
րորդ վաթսուն և երկու : և դարձցին ,
և շինեսցին հրապարակքն՝ և պա_
րիսպք՝ և նորոգեսցին ժամանակք :
26 * Եւ յետ վաթսուն և երկուց եօթն_
երորդաց բարձցի օծութի . և իրաւունք
ոչ իցեն 'ի նմա . և քաղաքն՝ և սրբութի
ապականեսցին առաջնորդաւն հան_
դերձ որ գայցէ . և ջնջեսցին հեղեղաւ :
և մինչև վախճան պատերազմին համա
ռօտելոյ . կարգեսցէ զապականութի ,
( և զօրացուսցէ զուխտ բազմաց եօթն
երորդ մի՝ և կէս եօթներորդի . դադա
րեցուսցէ զսեղանս՝ և զպատարագս .
մինչև 'ի ծայրս անկեանն ապականու_
թե . մինչև ցվախճան և ցտագնապ
կարգեսցէ 'ի վերայ ապականութեան)
27 * Եւ զօրացուսցէ զուխտ բազմաց . և
եօթներորդ մի՝ և կէս եօթներորդին
բարձցին զոհք՝ և նուէրք . և 'ի վր տա
ճարին պղծութի աւերածոյն կացցէ
մինչև 'ի վախճան ժամանակի : կատա
րած տացի 'ի վերայ աւերածին :

‖ Մտ. 24.15. Յօհ. 1.45.

## Գլ : Ժ :

### Տեսիլ Վեցերորդ :

1 Յամին երրորդի կիւրոսի արքայի
պարսից . բանն յայտնեցաւ դա_
նիէլի՝ որոյ անուն կոչեցաւ բաղտա_
սար . և ճշմարիտ է բանն . և զօրութի
մեծ՝ և հանճար տուաւ նմա 'ի տես_
2 լեանն : * Յաւուրսն յայնոսիկ ես դա_
նիէլ էի 'ի սուգ . երիս եօթներորդս
3 աւուրց : * Հաց ցանկութե ոչ կերի . և
միս՝ և գինի ոչ եմուտ 'ի բերան իմ . և
իւղով ոչ օծայ . մինչ 'ի կատարել երից
4 եօթներորդաց աւուրց : * Յաւուրն
քսան

քաններորդի և չորրորդի ամսեանն առաջնոյ. կայի ես առ ափն գետոյն մեծի՝ որ է տիգրիս՝ դկղաթ: 5 *Ամբարձի զաչս իմ. և ահա այր մի զգեցեալ փառս. և ընդ մէջ իւր ածեալ կամար յոսկւոյն ոփազայ: 6 *Եւ մարմին նր̅ ծովագոյն. և երեսք նր̅ իբրև զտեսիլ փայլական. և աչք նր̅ իբրև ճառագայթք հրոյ. և բազուկք և բարձք նր̅ իբրև զտեսիլ փայլուն պղնձոյ. և բարբառ բանից նր̅ իբրև զբարբառ զօրու: 7 *Եւ տեսի ես դանիէլ միայն զտեսիլն. և արքն՝ որք ընդ իս էին՝ ոչ տեսին զտեսիլն: այլ ահ մեծ անկաւ ՚ի վր̅ նց̅. և փախեան զարհուրեալք: 8 *Եւ ես միայն մնացի. և տեսի զտեսիլն զայն մեծ. և ոչ մնաց յիս զօրութիւն. և փառք իմ յապականութիւն դարձան. և չհանդարտեցի զօրութեան: 9 *Եւ լուայ զբարբառ բանից նր̅. և ՚ի լսելն իմում զբարբառ բանիցն՝ կայի հիացեալ. և երեսք իմ յերկիր խոնարհեալ: 10 *Եւ ահա ձեռն ձգեալ առ իս՝ կանգնեաց զիս ՚ի ծունկս. և ՚ի թաթս ձեռաց իմոց: 11 *Եւ ասէ ցիս. դանիէլ այր ցանկալի, խելամուտ լեր բանիցս՝ զոր ես խօսեցայց ը̅ քեզ. և կաց ՚ի կայի քում. զի այժմ առաքեցայ առ քեզ: և ՚ի խօսիլ նր̅ զբանս զայս ընդ իս, կացի յոտին դողութեամբ: 12 *Եւ ասէ ցիս. մի երկնչիր դանիէլ. զի յօրէ յորմէ ետուր զսիրտ քո խելամուտ լինել, և վշտանալ առաջի այ̅ քոյ, լսելի եղեն բանք քո. և ես եկի ընդ բանից քոց: 13 *Եւ իշխան թագաւորութեանն պարսից կայր հակառակ զքսան և զմի օր. և ահա միքայէլ՝ մի յառաջին իշխանացն եկն օգնել ինձ. և թողի զնա անդ ընդ իշխանի թագաւորութեան պարսից: 14 *Եւ եկի խելամուտ առնել զքեզ՝ որ չափ ինչ անցք անցանիցեն ընդ ժողովուրդ քո՝ յաւուրս յետինս. զի տեսիլդ յաւուրս է: 15 *Եւ ՚ի խօսիլ նր̅ ը̅ իս ըստ բանիցս այսոցիկ, անկայ ՚ի վր̅ երեսաց իմոց յերկիր՝ և կայի հիացեալ: 16 *Եւ ահա իբրև ՚ի նմանութիւն որդւոյ մարդոյ մերձեցաւ ՚ի շրթունս իմ. բացի զբերան իմ, և խօսեցայ. և ասեմ ցայրն՝ որ կայր յանդիման ինձ. Տր̅՝ յերևիլդ քո ինձ՝ խռովեցաւ փոր իմ յիս. և ոչ գոյ յիս զօրութիւն: 17 *Եւ զիարդ կարիցէ ծառայ քո Տր̅ խօսիլ ընդ Տն̅ իմում. և ոչ ևս է յիս զօրութիւն կալոյ. և շունչ մնաց յիս: 18 *Եւ յաւել՝ և մերձեցաւ յիս իբրև զտեսիլ մարդոյ. և զօրացոյց զիս: 19 *Եւ ասէ՝ մի երկնչիր այր ցանկալի. խաղաղութիւն ընդ քեզ. զօրացիր՝ և քաջ լեր. և ՚ի խօսիլ նորա ընդ իս՝ զօրացայ, և ասեմ. խօսեսցի

20 Տր̅՝ զի զօրացուցեր զիս: *Եւ ասէ՝ թէ գիտիցես վասն էր եկի առ քեզ. և արդ՝ դառնամ անդրէն տալ պատերազմ ընդ իշխանին պարսից. և ես երթայի, և իշխանն յունաց գայր: 21 *Բայց պատմեցից քեզ՝ զինչ կարգեալ է ՚ի գիրս ճշմարտութեան. և ոչոք է ինձ օգնական այսոցիկ. բայց միքայէլ իշխանն ձեր:

## ԳԼ: ԺԱ:

1 Եւ ես յառաջնում ամին կիւրոսի կայի ՚ի հաստատութեան. և ՚ի զօրութեան: 2 *Եւ արդ՝ պատմեցից քեզ զճշմարտութիւն. ահա երեք թագաւորք յարիցեն յերկրին պարսից. և չորրորդն մեծասցի քան զամենեսեան մեծութիւն մեծ. և յետ զօրանալոյ նր̅ ՚ի մեծութեան իւրում յարիցէ ՚ի վր̅ թագաւորութեանցն յունաց: 3 *Եւ յարիցէ թագաւոր հզօր. և տիրեսցէ տէրութ̅ բազմաւ. և արասցէ ըստ կամս իւր: 4 *Եւ իբրև յարիցէ, թագաւորութիւն նորա փշրեսցի. և բաժանեսցի ՚ի չորս հողմս երկնից. և ոչ ըստ վախճանի նր̅ և ոչ ըստ տէրութեան նր̅ զոր տիրեաց. զի խլեսցի թագաւորութիւն նր̅, և այլոց՝ թող զնոցայն: 5 *Եւ զօրասցի թագաւորն հարաւոյ. և մի յիշխանացն զօրասցի ՚ի վր̅ նր̅. և տիրեսցէ տէրութիւն մեծ: 6 *Եւ յետ ամացն իւրեանց խառնակեսցին ը̅ միմեանս. և դուստր արքային հարաւոյ մտցէ առ արքայն հիւսիսոյ առնել դաշինս ընդ նմա. և չհանդարտեսցէ զօրութեան բազկին. և ոչ կացցէ զաւակ նր̅. և մատնեսցի ինքն և ածեալքն իւր. և օրիորդքն. և որ զօրացուցանէր զնա ՚ի ժամանակին: 7 *Եւ յարիցէ ՚ի ծաղկէ արմատոյ նր̅ ՚ի վերայ պատրաստութեան իւրոյ. և եկեսցէ առ զօրութիւն. և մտցէ ՚ի հաստատութիւս թագաւորութեանն հիւսիսոյ. 8 և արասցէ ընդ նս̅՝ և զօրասցի: *Եւ զաստուածս նոցա կործանեսցէ հանդերձ ձուլածովք նց̅. և զամ սպաս ցանկալիս նոցա՝ զոսկւոյ և զարծաթոյ գերի առեալ բերցէ յեգիպտոս. և ինքն հաստատեսցի քան զթագաւորն հիւսիսոյ: 9 *Եւ մտցէ ՚ի թագաւորութիւն արքային հարաւոյ. և դարձցի 10 անդրէն յերկիր իւր: *Եւ որդիք նր̅ ժողովեսցեն զամբոխ զօրաց բազմաց. և մտցէ դիմել՝ և հեղեղատեսցէ՝ և անցցէ, և դադարեսցէ, և գրգռեսցէ 11 մինչև ՚ի զօրութիւն նորա: *Եւ դառնասցի թագաւորն հարաւոյ. և ելցէ պատերազմ ընդ թագաւորին հիւսիսոյ. և գումարեսցէ զօրս բազումս՝ և 12 մատնեսցի զօրն ՚ի ձեռս նորա: *Եւ

առցէ զամբոխն՝ և բարձրասցի սիրտ
նորա. և կործանեսցէ զբիւրաւորս՝ և
ոչ զօրասցի: * Եւ դարձցի արքայն 13
հիւսիսոյ՝ և ածցէ զօր բազում քան
զառաջինն. և 'ի վախճանի ժամանա_
կացն եկեսցէ` 'ի մտանել զօրու մեծաւ
և բազում ստացուածովք: * Եւ 'ի 14
ժամանակսն յայնոսիկ բազումք յարի
ցեն 'ի վերայ թագաւորին հարաւոյ.
և որդիք մնացելոց ժողովրդեան քո
բարձրասցին հաստատել զտեսիլն՝ և
տկարասցին: * Եւ մտցէ թագաւորն 15
հարաւոյ. և կուտեսցէ հող. և առցէ
զքաղաքս ամուրս՝ և բազուկք արքային
հարաւոյ հաստատեսցին. և յարիցեն
ընտրեալք նորա՝ և ոչ իցէ զօրութիւն
կալոյ: * Եւ արասցէ 'ի մտանելն իւր_ 16
ում առ նա զկամս իւր. և ոչ՛ք իցէ՝ որ
ունիցի զդէմ նորա. կացցէ յերկրին
սաբիրայ. և վախճանեսցի 'ի ձեռս նր:
* Եւ դիցէ զերեսս իւր մտանել զօ_ 17
րութբ յամ թագաւորութիս նորա.
և զամ ուղղութիս առնիցէ ընդ նմա.
և զդուստր կանանց տացէ նմա յապա
կանութի. և մի յամրասցի. և մի եղի
ցի նա նր: * Եւ դարձուսցէ զերեսս 18
իւր 'ի կղզիս. և առցէ զբազումս. և
այրեսցէ զիշխանն՝ որ նախատէրն զնս.
և զնախատանս նր դարձուսցէ յերեսս
նոցա: * Եւ դարձցի զօրութբ յերկիր 19
իւր, և տկարասցի, և անկցի, և ոչ գտա
նիցի: * Եւ յարիցէ յարմատոյ նորա 20
տունկ թագաւորութե 'ի վերայ պատ
րաստութե նորա. և բռնադատիցէ
առնել շուք թագաւորութեն. և յա
ւուրսն յայնոսիկ խորտակեսցի. ոչ երե_
սօք՝ և ոչ պատերազմաւ: * Կացցէ 'ի 21
վերայ պատրաստութե իւրոյ՝ զի ար_
համարհեցաւ. և ոչ ետու նմա փառս
թագաւորութե. և եկեսցէ յաջողու_
թբ. և բռնաւորեսցի թագաւորութեց
գայթագղութբք: * Եւ բազուկք 22
այնր՝ որք հեղեղատեսցեն. և հեղեղա
տեսցին յերեսաց նր. և խորտակեսցի,
և առաջնորդ ուխտին: * Եւ այնոցիկ 23
որք խառնիցին 'ի նա՝ արասցէ նեն_
գութի. և ելցէ, և զօրասցի 'ի մր նր
սակաւ ազգաւ: * Եւ յաջողութբ՝ և 24
բազում աշխարհօք եկեսցէ՝ և արաս_
ցէ՝ զորս ոչ արարին հարք նորա. և ոչ
հարք հարց նր. և զաւար՝ և զկապուտ՝
և զստացուածս բաշխեսցէ նոցա. և 'ի
վերայ եգիպտացւոց խորհուրդ խոր_
հեսցի, մինչև 'ի ժամանակ: * Եւ զար 25
թիցէ զօրութի նորա. և սիրտ նորա
'ի մր թագաւորին հարաւոյ զօրութբ
մեծաւ. և թագաւորն հարաւոյ խմ_
բեսցէ զպատերազմ զօրու մեծաւ և

Յայտ. 19.19.

հզօրաւ յոյժ. և ոչ համադարտեսցի, զի
խորհեսցին 'ի վերայ նր խորհուրդս:
26 *Եւ կերիցեն՝ որինչ նմա անկ իցէ. և
խորտակեսցեն զնա. և զզօրսն այրես_
ցեն. և անկցին վիրաւորք բազումք:
27 * Եւ երկոցունց թագաւորացն սիրտք
իւրեանց 'ի չարութի. և 'ի միում սե_
ղան սուտ խօսեսցին. և մի յաջողեսցի՝
28 զի վախճան 'ի ժամանակ է: * Եւ դարձ
ցի յերկիր իւր մեծութբ բազմաւ. և
սիրտ նորա 'ի մր ուխտին սրբոյ. և ա_
րասցէ, և դարձցի յերկիր իւր:
29 * 'Ի ժամանակի դարձցի՝ և եկեսցէ 'ի
մր հարաւոյ. և ոչ եղիցի իբրև զա_
30 ռաջինն վերջինն: * Եւ մտցեն 'ի նա
բնակք կիտացւոց՝ և խոնարհեսցին.
և դարձցի՝ և բարկասցի 'ի մր ուխտին
սրբոյ. և արասցէ, և դարձցի, և դու_
մարեսցի 'ի վերայ այնոցիկ՝ ոյք թողին
31 զուխտն սուրբ: * Եւ յարիցեն զաւ_
ակք 'ի նմանէ. և պղծեսցեն զսրբութն
բռնութբ. և փոխեսցեն զհանապա_
զորդութիւն. և տացեն զպղծութիւն
32 ապականութե: * Եւ ապականիչք
ուխտին ածցեն 'ի մր իւրեանց զգայ
թագղութին. և ժողովուրդ՝ որ ճա_
նաչէ զԱծ իւր՝ զօրասցին՝ և արասցեն:
33 * Եւ հանճարեղք ժողովրդեանն բա
զում իմիք խելամուտ եղիցին. և
տկարասցին սրով և հրով՝ և գերութբ՝
34 և յափշտակութբ՝ զաւուրս: * Եւ 'ի
տկարանալ նց՝ զօգնականութի ինչ
սակաւ գտցեն. և յաւելցին 'ի նս բա_
35 զումք գայթագղութբ: * Եւ 'ի հան_
ճարեղացն տկարասցին 'ի փորձել զնս
և ընտրել՝ և յայտնել մինչև 'ի վախճան
ժամանակի. զի տակաւին ժամանակ
36 է: * Եւ արասցէ ըստ կամաց իւրոց.
և բարձրասցի թագաւորն. և հպար_
տասցի 'ի մր ամ այ. և 'ի մր Այն
աստուծոյ խօսեսցի ամբարտաւանս.
և յաջողեսցի. մինչև վախճանեսցի
բարկութի. քանզի վախճան լինելոց է:
37 * Եւ 'ի վերայ Այն հարցն իւրեանց
զմտաւ ածցէ. և վասն ցանկութեան
կանանց. և զամ դիս զմտաւ ոչ ածի_
ցէ. և 'ի վերայ ամի հպարտասցի:
38 *Եւ զԱծ հզօր 'ի տեղւոջէ իւրմէ փա
ռաւորեսցէ. և զԱծ՝ զոր ոչ ծանեան
հարք նորա՝ փառաւորեսցէ ոսկւով և
արծաթով և ականմբք պատուականօք
39 և ցանկալեօք: * Եւ անցցէ յաւուրս
փախստականաց ընդ այ օտարի. և
յաճախեսցէ փառս. և հնազանդեսցու
ցէ նց զբազումս. և զերկիրն բաժա_
40 նեսցէ 'ի պարգևի: * Եւ 'ի ժամանա_
կի վախճանի՝ ոգորեսցի ընդ արքային
հարաւոյ. և զօրաժողով լիցի 'ի վերայ
նորա

նորա արքայն հիւսիսոյ. կառօք՝ և հե_
ծելօք՝ և նաւօք բազմօք՝ և մտցէ յեր_
կիրն՝ և խորտակեսցէ. և անցցէ: *Եւ 41
մտցէ յերկիրն սաբայիմ. և բազումք
տկարասցին. և սոքա իցեն՝ որք ապրե
ցին 'ի ձեռաց նորա. եդովմ՝ և մովաբ.
և իշխանութի որդւոյն ամոնայ:
*Եւ ձգեսցէ զձեռն իւր յերկիրն. և 42
երկիրն եգիպտացւոց ոչ եղիցի 'ի փր_
կութի: *Եւ տիրեսցէ 'ի վ̃ի գաղտ_ 43
նեաց ոսկւոյ՝ և արծաթոյ. և 'ի վերայ
ա̃մ ցանկալեացն եգիպտացւոց՝ և լի_
բեացւոց՝ և եթէովպացւոց յամուրս
նոցա: *Եւ ապա համբաւք՝ և տագ_ 44
նապք խռովեսցեն զնա յարևելից՝ և 'ի
հիւսիսոյ. եկեսցէ սրտմտութ̃ բազ
մաւ ապականել զբազումս: *Եւ հար 45
ցէ զխորան իւր յեփադօն 'ի մէջ ծո_
վուցն 'ի լեառն սաբային սուրբ. և
եկեսցէ մինչև 'ի կողմն մի նորա. և
ոչո՛ք իցէ՝ որ փրկիցէ զնա:

## ԳԼ: ԺԲ.

1 Եւ 'ի ժամանակին յայնմիկ յարի_
ցէ միքայէլ իշխան մեծ. որ կայ
'ի վերայ որդւոց ժողովրդեան քոյ. և
եղիցի ժամանակ նեղութե. նեղու_
թի, որպիսի ոչ եղև՝ յորմէ հետէ եղև
ազգ 'ի վ̃ի երկրի մինչև 'ի ժամանակն
յայն. և 'ի ժամանակին յայնմիկ ապրես
ցի ժողովուրդ քո. ամենայն որ գտցի
գրեալ 'ի դպրութե: *Եւ բազումք 2
'ի ննջեցելոց 'ի հող երկրի՝ յարիցեն.
(Մատ. 25. 46.) ոմանք 'ի կեանս, և ոմանք 'ի նախա_
տինս և յամօթ յաւիտենական: *Եւ 3
(Իմաստ. 3. 7.) իմաստունք ծագեսցին իբրև զլուսա
ւորութի 'ի հաստատութե. և բա_
զումք յարդարոց իբրև զաստեղս յա_
ւիտեանս՝ և ևս: *Եւ դու դանիէլ՝ 4
փակեա՛ զբանսդ. և կնքեա՛ զգիրդ մին
չև 'ի ժամանակս վախճանիդ. մինչև
ուսցին բազումք. և բազմասցի գի_
տութի: *Եւ տեսի ես դանիէլ. և 5
(երկու անձինք) ահա երկու կային յայսկոյս և յայնկոյս
գետոյն: *Եւ ասեմ ցայրն՝ որ զգե_ 6
ցեալ էր զբադեանն. և կայր 'ի վերայ
ջուրց գետոյն. մինչև ցե՞րբ իցէ վախ
ճան սքանչելեացդ՝ զոր ասացեր: *Եւ 7
լուա՛յ յառնէն՝ որ զգեցեալ էր զբա_
դեանն. և կայր 'ի վերայ ջուրց գե_
(Յայտ. 10. 5.) տոյն. ամբարձ զաջ իւր և զձախ իւր
յերկինս. և երդուաւ 'ի կենդանին
յաւիտենից. թէ 'ի ժամանակ՝ և 'ի
ժամանակս՝ և 'ի կէս ժամանակի: և
'ի կատարել ցրման ձեռին ժողովր_
դեան սրբեցելոյ՝ ծանիցեն զայս ա̃մ:
*Եւ ես լուա՛յ՝ և ոչ առի 'ի միտ. և ա_ 8
սեմ, Տէր զի՞նչ է վախճան այդոցիկ:

9 *Եւ ասէ՝ երթ դանիէլ. զի արգե_
լեալ՝ և կնքեալ են բանքս մինչև ցժա
10 մանակ վախճանի: *Ընտրեսցին՝ և
սպիտակասցին՝ և փորձեսցին՝ և սր_
բեսցին բազումք. և անօրինեսցին
անօրէնք. և ոչ առնուցուն 'ի միտ ա̃մ_
պարիշտք. և իմաստունք իմասցին:
11 *Եւ 'ի ժամանակէ փոփոխման յաձա
խութե. և տալոյ պղծութի աւերա_
ծին աւուրս հազար երեք հարիւր երե (1290)
12 սուն և հինգ: *Եւ երանի՝ որ համ_
բերեսցէ՝ և հասցէ յաւուրս հազար
13 երեք հարիւր երեսուն և հինգ: *Եւ
դու եկ՝ և հանգի՛ր. զի տակաւին են
աւուրք՝ և ժամք. 'ի կատարումն վախ_
ճանի. և հանգիցես՝ և յարիցես 'ի ժա_
մանակի քում 'ի վախճանի աւուրց:

## ԳԼ: ԺԳ.

1 Եւ դանիէլ էր կենաց կցորդ թա_
գաւորին. և փառաւորքան զա̃մ
2 բարեկամս նր: *Եւ էր կուռք մի բա
բելացւոց՝ անուն բէլ. և ելանէր նմա
ռոճիկ աւուր միոջ՝ նաշիհ երկոտա_
սան արդու. և քառասուն ոչխար: և
3 գինի վեց մար: *Եւ թագաւորն պաշ
տէր զնա: և երթայր հանապազ եր_
կիր պագանէր նմա: բայց դանիէլ պա
գանէր երկիր Ա̃յ իւրոյ: և ասէ ցնա
թագաւորն՝ դու ընդէ՞ր ոչ երկիր պա
4 գանես բէլայ: *Եւ նա ասէ. քանզի
ոչ պաշտեմ զկուռս ձեռագործս. այլ
զԱ̃ծ կենդանի՝ զարարիչն երկնի և
երկրի. որ ունի իշխանութի ա̃մ մարմնոյ:
5 *Եւ ասէ ցնա թագաւորն. իսկ բէլ
ո՞չ թուի քեզ ա̃ծ կենդանի. եթէ
ո՞չ տեսանես՝ որչափ ուտէ և ըմպէ
6 հանապազ: *Եւ ասէ դանիէլ ծիծա
ղելով. մի՛ խաբիր արքայ. զի դա է 'ի
ներքոյ կաւեայ՝ և արտաքոյ պղնձի. ո՛չ
է կերեալ դորա երբէք՝ և ո՛չ արբեալ:
7 *Եւ բարկացեալ թագաւորն՝ կոչեաց
զքուրմսն նր, և ասէ ցնոսա թագաւ
որն. եթէ ոչ ասիցէք ինձ՝ ո՛վ ուտիցէ
զծախսն զայն՝ մահու մեռանիցիք:
8 *Ապա եթէ յայտ առնիցէք՝ թէ զայն
ա̃մ բէլ ուտէ, մեռցի դանիէլ՝ զի հայ
հոյեաց զբէլ: և ասէ դանիէլ ցթա_
գաւորն. եղիցի ըստ բանի քում:
9 *Եւ էին քուրմք բէլայ եօթանասուն՝
թո՛ղ զկանայս և զմանկտիս: և եկն
թագաւորն դանիէլիւ հանդերձ 'ի
10 տուն բէլայ: *Եւ ասեն քուրմքն բէ_
լայ. ահաւասիկ մեք արտաքս ելցուք.
և դու արքայ, դի՛ր առաջի դորա զկե
րակուրդ. և կնքեա՛ մատանեաւ քով:
11 *Եւ եկեալ ընդ առաւօտ՝ եթէ ոչ
գտցի այդ ա̃մ կերեալ 'ի բէլայ՝ մեռ_

ցուք մեք ։ ապա եթէ ոչ՝ դանիէլ՝ որ սուտ խօսեցաւ զմէնջ ։ * 12 Եւ նոքա վստահ էին՝ զի արարեալ էին ընդ սեղանովն մուտ անյայտ. և ընդ այն մտանէին համապազ՝ և ուտէին զայն։

* 13 Եւ եղև իբրև ելին արտաքս. և թագաւորն եդ զկերակուրն առաջի բէլայ. և հրաման ետ դանիէլ խրոււմ մանկտւոյ ։ բերին զմոխիր՝ և ցանեցին ընդ ամ՝ մեհեանն առաջի թագաւորին միայնոյ։ և ելեալ արտաքս՝ փակեցին զդուռնն. և կնքեցին մատանեաւ թագաւորին՝ և գնացին ։* 14 Եւ քուրմքն մտին գիշերի ըստ սովորութեն իւրեանց՝ կանամիք և որդւովք իւրեանց. կերին զամենայն՝ և արբին՝ և ոչինչ թողին։

* 15 Եւ կանխեաց թագաւորն ընդ առաւօտն դանիէլիւ հանդերձ ։ * 16 Եւ ասէ՝ ողջ են կնիքդ դանիէլ. և նա ասէ՝ ողջ են արքայ ։* 17 Եւ եղև ընդ բանալ դրացն՝ հայեցեալ թագաւորին 'ի սեղանն, 'ի ձայն մեծ աղաղակեաց՝ և ասէ . մեծ ես բէլ. և ոչ գոյ նենգութի 'իքեզ՝ և ոչ մի։ * 18 Եւ ծիծաղեցաւ դանիէլ. և կալաւ զթագաւորն՝ զի մի մտանիցէ 'ի ներքս . և ասէ՝ անդէ հայեաց ընդ յատակդ՝ և տես, ո՞յր է հետդ այդ ։

* 19 Եւ ասէ թագաւորն . տեսանեմ հետս արանց՝ կանանց՝ և մանկտւոյ ։

* 20 Յայնժամ բարկացեալ թագաւորն կալաւ զքուրմսն՝ և զկանայս՝ և զորդիս նց ։ և ցուցին նմա զգաղտնի դուռսն՝ ընդ որ մտանէին՝ և ծախէին զսեղանն ։

* 21 Եւ կոտորեաց զնս թագաւորն՝ և զբէլ ետ 'ի ձեռս դանիէլի՝ և կործանեաց զնա՝ և զմեհեան նր ։ * 22 Եւ էր վիշապ մի մեծ՝ և պաշտէին զնա բաբելացիքն ։ * 23 Եւ ասէ թագաւորն ցդանիէլ . միթէ զդմանէ ասիցես , թէ պղնձի է . ահաւասիկ կենդանի է՝ ուտէ՝ և ըմպէ՝ և ոչ կարես ասել՝ թէ չիցէ դա ած կենդանի . արդ՝ եկ, պագդմա երկիր ։ * 24 Եւ ասէ ցնա դանիէլ՝ ես Տն ածոյ իմոյ երկիր պագից. զի նա է ԱԾ կենդանի ։ * 25 Բայց դու արքայ՝ տուր ինձ իշխանութի. և սպանից զվիշապդ առանց սրոյ և գաւազանի . և ասէ թագաւորն . տուեալ է քեզ։

* 26 Եւ էառ դանիէլ զիւղ՝ ձիւթ . և ձարպ՝ և մազ. և եփեաց 'ի միասին. և արար գնդակս՝ և եհար 'ի բերան վիշապին . և իբրև եկեր՝ պայթեցաւ վիշապն ։ և ասէ՝ տեսէք զպաշտամունդ ձեր ։ * 27 Եւ եղև իբրև լուան բաբելացիքն՝ բարկացան յոյժ. և կուտեցան 'ի վր թագաւորին՝ և ասեն. հրեայ եղև թագաւորն ։ զբէլ կործանեաց. և զվիշապն եսպան. զքուրմսն կոտորեաց ։ * 28 Եւ իբրև եկին՝ ասեն ցթագաւորն. տուր մեզ 'ի ձեռս զդանիէլ ։ ապա թէ ոչ՝ սպանանեմք զքեզ և զտուն քո։ * 29 Եւ իբրև ետես թագաւորն՝ թէ կարի տագնապեն զնա, հարկիւ ետ 'ի ձեռս նոցա զդանիէլ։

* 30 Եւ նոքա արկին զնա 'ի գուբն առիւծուց . և անդ էր զվեց օր ։ * 31 Եւ էին 'ի գբին եօթն առիւծք. և տային նց համապազ երկուս մարդս. և երկուս պատրուճակս ։ բայց յայնժամ ոչինչ արկին նց. զի վաղվաղակի կերիցեն զդանիէլ։ * 32 Եւ էր ամբակում մարգարէ 'ի հրէաստանի ։ և եփեաց թան. և բրդեաց զհաց 'ի կուր . և երթայր յանդ տանել մշակաց իւրոց ։ * 33 Եւ ասէ հրեշտակ Տն ցամբակում. տար զճաշդ՝ զոր ունիս՝ 'ի բաբիլոն դանիէլի՝ 'ի գուբն առիւծուց ։* 34 Եւ ասէ ամբակում. Տր զբաբիլոն իմ չէ տեսեալ. և զգուբն ոչ գիտեմ ուր իցէ ։

* 35 ‖ Եւ բուռն էհար հրեշտակն զգագաթանէ նորա . և կալաւ զվարսից գլխոյ նր . և եդ զնա 'ի բաբիլոն 'ի վր գբոյն սաստկութբ հոգւոյ իւրոյ։

* 36 Եւ աղաղակեաց ամբակում՝ և ասէ. դանիէլ՝ դանիէլ . արի , առ զճաշդ՝ զոր առաքեաց քեզ ԱԾ ։ * 37 Եւ ասէ դանիէլ . յիշեցեր զիս ԱԾ , և ոչ ընդվայր հարեր զսիրելիս քո ։ * 38 Եւ յարեաւ դանիէլ՝ և եկեր . և հրեշտակն ԱՅ տարաւ զամբակում նոյն ժամայն անդրէն 'ի տեղի իւր ։

* 39 Եւ թագաւորն եկն յաւուրն եօթներորդի աշխարել զդանիէլ . և եկն 'ի բերան գբոյն . և հայեցաւ, և ետես զդանիէլ՝ զի նստէր։* 40 Եւ աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ և ասէ . մեծ ես Տր ԱԾ դանիէլի. և չիք այլոք բաց 'իքէն. և էառ զնա 'ի վեր ։* 41 Եւ զնոսա որ կորուստեան նր արկին 'ի գուբն. և գէշ գէշ պատառեցան նոյնժամայն առաջի նր։ * 42 Յայնժամ ասէ թագաւորն. պակնուցուն ամ բնակիչք ընդհանուր երկրի յԱՅ դանիէլի . զի նա է փրկիչ՝ արարող նշանաց՝ և սքանչելեաց երկրի. որ փրկեաց զդանիէլ 'ի գբոյ առիւծուց ։



Երկոտասան Մարգարէք։ 1. Ովսէէ։ 2. Յովէլ։ 3. Ամովս։ 4. Աբդիաս։ 5. Յովնան։ 6. Միքիաս։ 7. Նաւում։ 8. Ամբակում։ 9. Սոփոնիա։ 10. Անգէէ։ 11. Զաքարիա։ 12. Մաղաքիա։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՈՎՍԷԱՅ։

Գլուխ Առաջնորդ։

1 Բան Տն. որ եղև առ Ովսէէ. որդի Բերայ. յաւուրս Ոզիայ. և Յովաթամա. և Աքազու՝ և Եզեկիայ թագաւորաց Յուդայ. և յաւուրս Յերոբովամայ որդւոյ Յովասայ թագաւորին Իլի։ (Բէերայ)

2 ՍԿԻԶԲՆ ԲԱՆԻՑ Տն առ Ովսէէ. և ասէ Տր ցՈվսէէ. գնա առ դու քեզ զկին պոռնկութե. զի պոռնկելով պոռնկեսցի երկիր 'ի Տէ։ 3 * Եւ չոգաւ՝ և էառ զԳոմեր՝ զդուստր Դաբելայիմայ. և յղացաւ՝ և ծնաւ նմա որդի։ 4 * Եւ ասէ ցնա Տր. կոչեա զանուն նր Եզրայել. քանզի սակաւիկ մւս և խնդրեցից զարիւնն յեզրայելի 'ի տանէն յէհուլայ. և թագաւորեցուցից զթագաւորութի (և դադա-րեցուցից) 5 տանն Իլի։ * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ խորտակեցից զաղեղն Իլի 'ի ձոր ձորն յեզրայելի։ 6 * Յղացաւ միւսանգամ, և ծնաւ դուստր. և ասէ ցնա. կոչեա զանուն նր Չողորմեալ. զի ոչ ևս յաւելից ողորմել տանն Իսրայելի. այլ ընդդէմ կացից նց հակառակութե։ 7 * Բայց որդւոցն յուդայ ողորմեցայց՝ և փրկեցից զնս Տր Ած իւրեանց. և ոչ փրկեցից զնս աղեղամբ՝ և ոչ սրով՝ և ոչ պատերազմաւ՝ և ոչ կառօք՝ և ոչ 8 երիվարօք՝ և ոչ հեծելօք։ * Եւ մեկնեաց 'ի ստենէ զՉողորմեալն. դարձեալ 9 յղացաւ, և ծնաւ զորդի։ * Եւ ասէ՝ կոչեա զանուն նր Ոչ ժողովուրդ իմ. զի դուք չէք ժողովուրդ իմ. և ես ոչ (ոչ եմ ձեր) 10 ինչ եմ ձեր։ * Եւ էր թիւ որդւոցն Իլի իբրև զաւազ ծովու անչափ՝ և անթիւ։ ‖ Եւ եղիցի 'ի տեղւոջ յորում ‖ ասացաւ՝ ոչ ժողովուրդ իմ դուք, անդ կոչեսցին նոքա որդիք այ կենդանւոյ։ (Հռովմ. 9.25.)

11 * Եւ ժողովեսցին որդիքն յուդայ՝ և որդիքն Իլի 'ի միասին. և դիցեն իւր-

եանց

եանց իշխանութիւն մի. և ելցեն յերկրէ անտի՝ զի մեծ է օրն յեզրայելի։

## Գլ: Բ.

1 Ասացէք ցեղբայր ձեր՝ ժողովուրդ իմ. և ցքոյրն ձեր՝ ողորմեալ։

*դատեցէք / զմայր ձեր / դատեցէք*

2 * Դատեցարուք ընդ մօր ձերում, դատեցարուք. զի նա ոչ է իմ կին. և ես ոչ եմ այր նր։ և բարձից զպոռնկութիւն նր յերեսաց իմոց. և զշնութիւն նր 'ի միջոյ ստեանց իւրոց։ 3 * Օի արարից զնա մերկ. և կացուցից զնա ըստ աւուրցն ծննդեան իւրոյ : և եդից զնա իբրև զանապատ . և կարգեցից զնա իբրև զերկիր անջուր. և սպանից զնա 'ի ծարաւոյ : 4 * Եւ որդւոց նորա ոչ ողորմեցայց. զի որդիք պոռնկութեան են։ 5 * Օի պոռնկելով պոռնկեցաւ մայր նոցա. և յամօթ արար՝ որ ծնաւն զնոսա։

*և յամօթ / եղև՝ որ*

զի ասաց՝ երթայց զհետ հոմանեաց իմոց՝ ոյք տացեն ինձ զհաց իմ և զջուր՝ և զհանդերձ՝ և զկտաւ իմ՝ և զգինի իմ՝ և զձէթ իմ՝ և զամ ինչ որ պիտոյ է ինձ։ 6 * Վասն այնորիկ ես փակեցից զճանապարհս նր պատնիշօք՝ և առակնեցից զճանապարհս նր. և զշաւիղս իւր մի գտցէ : 7 * Եւ ընթասցի զհետ հոմանեաց իւրոց՝ և մի հասցէ նց. խնդրեսցէ զնոսա՝ և մի գտցէ զնս։ և ասասցէ՝ երթայց, և դարձայց առ այրն իմ առաջին . զի յայնժամ բարի էր ինձ քան արդ։ 8 * Եւ նա ոչ գիտաց՝ թէ ես ետու նմա զցորեան, և զգինին, և զձէթն, և բազմացուցի նմա զարծաթ։ և նա արար արծաթեղէնս՝ և ոսկեղէնս՝ յաձախեաց բահաղու։ 9 * Վսն այնորիկ դարձուցից՝ և առից զցորեան իմ 'ի ժամանակի իւրում. և զերծից 'ի նմանէ զհանդերձ իմ, և զկտաւ իմ. զի մի ծածկեսցէ զծանականս իւր։ 10 * Եւ արդ՝ յայտնեցից զպղծութիւն նր առաջի հոմանեաց իւրոց . և ոչոք հանիցէ 'ի ձեռաց իմոց։ 11 * Եւ դարձուցից զամ բարեկենդանութիւնս նր՝ և զտօնս նր՝ և զամսագլուխս նորա և զշաբաթս նորա՝ և զամ վաճառս նր։ 12 * Եւ ապականեցից զայգիս նորա և զթզենիս նր. զորս միանգամ ասաց՝ եթէ վարձք իմ են այսոքիկ, զորս ետուն ինձ հոմանիք իմ։ և եդից զայն 'ի վկայութիւն : և կերիցեն զայն գազանք անապատի՝ և թռչունք երկնից՝ և սողունք երկրի։ 13 * Եւ խնդրեցից 'ի նմանէ զվրէժ զաւուրցն բահաղիմայ՝ յորս զոհէր նց. և դնէր գինդս՝ և արկանէր զքառամանեակն իւր. և երթայր զհետ հոմանեացն իւրոց . և զիս մոռացեալ էր . ասէ Տր։ 14 * Վասն այնորիկ ահաւասիկ ստերիւրեցից զնա. և կարգեցից զնա իբրև զանապատ : և խօսեցայց 'ի սիրտ նր։ 15 * Եւ տաց նմա զստացուածս իւր անտի. և զձորձորն նաքորայ բանալ զմիտս նր . և խոնարհեսցի անդ ըստ աւուրց տղայութե իւրոյ. և ըստ աւուրց ելանելոյ նր յերկրէն եգիպտացւոց։ 16 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ ասէ Տր. կոչեսցէ զիս այր իմ. և ոչ կոչեսցէ զիս բահաղիմ։ 17 * Եւ բարձից զանուանս բահաղիմայ 'ի բերանոյ նր. և մի ևս յիշեսցին անուանք նոցա։ 18 * Եւ եդից նց զուխտ յաւուր յայնմիկ հանդերձ գազանօք անապատի՝ և թռչնօք երկնից՝ և սողնօք երկրի : և զաղեղն՝ և զսուսեր՝ և զճակատամարտ խորտակեցից յերկրէ : և բնակեցուցից զքեզ յուսով : 19 * Եւ խօսեցայց զքեզ ինձ յաւիտեան : և խօսեցայց զքեզ ինձ արդարութբ՝ և իրաւամբք՝ և ողորմութբ՝ և գթութբք։ 20 * Եւ խօսեցայց զքեզ ինձ հաւատովք . և ծանիցես զՏէր։ 21 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր. լուայց ես երկնից՝ և երկինք լուիցեն երկրի : 22 * Եւ երկիր լուիցէ ցորենոյ և գինւոյ՝ և ձիթոյ. և նք լուիցեն յեզրայելի։ 23 * Եւ սերմանեցից զնա ինձ 'ի վերայ երկրի. և ողորմեցայց չողորմելոյն : 24 * Եւ ասացից ցոչժողովուրդ իմ, ժողովուրդ իմ ես դու. և նա ասասցէ, Տր Աստուած իմ ես դու։

*Հռով. 9. 5. 1. Պետ. 2. 10.*

## Գլ: Գ.

1 Եւ ասէ ցիս Տր դարձեալ. աստ՝ երթ դու՝ և սիրեա զկին մի՝ որ սիրեսցէ զչարութիւն և իցէ շուն : որպէս սիրեաց Աստուած զորդիսն Իէլի. և նք հային յաստուածս օտարս. և սիրեն կտապս չամիչեղէնս : 2 * Եւ վարձեցայ ես ինձ հնգետասան արծաթոյ. և քուռ մի գարւոյ և մարու մի գինւոյ։ 3 * Եւ ասեմ ցնա. աւուրս բազումս նստցիս դու ինձ. և ոչ ևս պոռնկեսցիս. և ոչ եղիցիս առն այլում : 4 * Օի աւուրս բազումս նստցին որդիքն Իէլի առանց թագաւորի՝ և առանց իշխանի՝ և առանց պատարագաց՝ և առանց սեղանոյ՝ և առանց քահանայութե՝ և առանց յայտնութեանց : 5 * Եւ յետ այնորիկ դարձցին որդիքն Իէլի . և խնդրեսցեն զՏր Աստուած իւրեանց. և զդաւիթ արքայ իւրեանց. և զօրասցին 'ի Տր՝ և 'ի բարութիւնս նր յաւուրս կատարածի։

## Գլ: Դ.

1 Լուարուք զբան Տն որդիք Իէլի. զի դատաստան Տն է ընդ բնակիչս երկրի։ զի ոչ գոյ ճշմարտութի. ոչ ողորմու_

մութի՝ և ոչ գիտութի Այ 'ի վերայ երկրի։ 2 *Անէծք՝ և ստութի՝ և սպանութի. և գողութի՝ և շնութի հեղեալ 'ի վերայ երկրի. և արիւն ընդ արեանս խառնեն։ 3 *Վա այնորիկ սուգ առցէ երկիր. և նուազեսցի ամ բնակիչք իւրովք. և գազանօք անապատի. և սողնովք երկրի։ և թռչնօք երկնից. և ձկունք ծովու պակասեսցեն։
4 *Զի ոչ՛ք իցէ՝ որ դատիցէ՝ և ոչ այն՝ որ յանդիմանիցէ։ բայց ժողովուրդ իմ իբրև զքահանայն հակառակօղ։ 5 *Այլ տկարասցին 'ի տուէ. և տկարասցի մարգարէն ընդ քեզ։ գիշերոյ նմանեցուցի զմայրն քո։ 6 *Նմանեցաւ ժողովուրդ իմ այնմիկ՝ յորում ոչ գոյր գիտութի։ զի դու զգիտութի մերժեցեր, մերժեցից և ես զքեզ. զի մի՛ եւս քահանայասցիս ինձ։ և մոռացար զօրէնս քո, մոռացայց և ես զորդիսն քո։ 7 *Ըստ բազմութեն իւրեանց՝ նոյնպէս և մեղան ինձ։ զփառս նց յանարգութի հատուցից։ 8 *Զմեղս ժողովրդեան իմոյ կերիցեն. և անիրաւութեք իւրեանց առցեն զանձինս իւրեանց։ 9 *Եւ եղիցի ոպ ժողովուրդն՝ նոյնպէս և քահանայն. և խնդրեցից զվրէժ 'ի նմանէ. ըստ ճանապարհաց նր՝ և ըստ խորհրդոց նր հատուցից նմա։ 10 *Կերիցեն՝ և մի՛ յագեսցին։ պոռնկեցան, և մի՛ յաջողեսցին. զի զՏր թողին՝ անխտիր լինել 'ի պոռնկութի։ 11 *Եւ զգինի և զարբեցութի ընկալաւ սիրտ ժողովրդեան իմոյ։ 12 *'Ի քուէս իւրեանց հարցանէին՝ և գաւազանօք պատմէին նմա։ այսու պոռնկութե մոլորեցան. և պոռնկեցան յԱյ իւրեանց։ 13 *'Ի գլուխս լերանց զոհէին՝ և 'ի վերայ բլրոց զենուին՝ 'ի ներքոյ կաղնեաց՝ և կաղամախեաց՝ և վարսաւոր ծառոց։ զի հաճոյ լինէր հովանին։ վասն այնորիկ պոռնկեսցին դստերք. և շնասցին հարսունք ձեր։ 14 *Եւ ոչ արարից այց դստերաց ձերոց՝ յորժամ պոռնկեսցին. և հարսանց ձերոց՝ յորժամ շնասցին։ զի նոքա ընդ պոռնիկս թաթաւէին. և ընդ նուիրեալսն զոհէին. և ժողովուրդ քո որ ոչ իմանայր զայն՝ խառնակիւր ընդ պոռնիկս։ 15 *Բայց դու իէլ, մի՛ տգէտ լինիր։ և յուդա՝ մի՛ մտանէք 'ի գաղգաղայ. և մի՛ ելանէք 'ի տուն օնայ. և մի՛ երդնուք 'ի Տր կենդանի։ 16 *Զի իբրև երինջ լծընկէց եղև ինձ իէլ։ արդ՝ արածեսցէ զնս Տր իբրև զգառն յանդորրու։ 17 *Հաղորդ կռոց եփրեմ. եդ անձին իւրում գայթագղութի կռոցն քանանացւոց։ 18 *Պոռնկեցան պոռնկութբ. սիրեցին զանարգութի 'ի հպարտութէ նորա։ 19 *Մրրիկ հողմոյ շնչեսցէ 'ի թևս նր. և ամաչեսցեն 'ի սեղանոյ իւրեանց։

## Գլ. Ե.

1 Լուարո՛ւք զայս քահանայք. և անսացէք տո՛ւնդ իէլի. և տուն թագաւորին ունկնդիր լերուք։ քանզի ընդ ձեզ է դատաստան. զի որոգայթք եղերուք դիտանոցին. և իբրև զվարմ ձգեալ 'ի գլուխ գահաւանդի։ 2 *Զոր որսորդք յորս հաստատեցին. ես եմ խրատիչ ձեր։ 3 *Ես ծանեայ զեփրեմ. և իէլ ոչ է 'ի բացէ յինէն. քանզի այժմ պոռնկեցաւ եփրեմ. և պղծեցաւ իէլ։ 4 *Ոչ ետուն զխորհուրդս իւրեանց դառնալ առ Ած իւրեանց. զի այս պոռնկութե է 'ի նս. և զՏր ոչ ծանեան։ 5 *Եւ խոնարհեսցի հպարտութին իէլի յերեսս նր. և իէլ՝ և եփրեմ տկարասցին յանօրէնութիս իւրեանց. տկարասցի և յուդա ընդ նոսա։ 6 *Յորձիւք և պատարագօք երթիցեն խնդրել զՏր, և ոչ գտցեն զնա. զի խոյս ետ 'ի նոցանէն։ 7 *Զի զՏր թողին. քանզի որդիք օտարք ծնան նոցա. արդ՝ այժմ կերիցէ զնս երեւիլ և զվիճակս նց։ 8 *Փո՛ղ հարէք 'ի վերայ բլրոց. գոչեցէք 'ի վերայ բարձանց. քարո՛զ կարդացէք 'ի տուն օնայ. թէ յիմարեցաւ բենիամին։ 9 *Եւ եփրեմ եղև յապականութի յաւուրս յանդիմանութե. 'ի մէջ ազգայն իէլի ցուցի զհաւատարմութիս։ 10 *Եղեն իշխանք յուդայ՝ ոպ որք փոփոխեն զսահմանս. 'ի վերայ նոցա հեղից իբրև զջուր զասպատակ իմ։ 11 *Զրկեաց եփրեմ զոսոխ իւր. և կոխեաց զիրաւունս. զի սկսաւ երթալ զհետ ունոտեաց։ 12 *Եւ ես իբրև ըզխռով եղէց եփրեմի. և իբրև զխայթոց տանն յուդայ։ 13 *Ետես եփրեմ զախտ իւր՝ և յուդա զցաւս իւր. և գնաց եփրեմ առ ասորեստանեայս. և առաքեաց հրեշտակս առ արքայն յարիմայ. և նա ոչ կարաց փրկել զձեզ։ և ոչ հանդուցանել զձեզ 'ի ցաւոց։ 14 *Զի ես եմ իբրև զյովազ 'ի վերայ եփրեմի. և իբրև զառիւծ 'ի վերայ տանն յուդայ. և յարձակեցայց, և յափշտակեցից զնս. առից, և ոչ՛ք իցէ՝ որ փրկիցէ։ 15 *Գնացից, և դարձայց 'ի տեղի իմ. մինչև ապականեսցին, և խնդրեսցեն զերեսս իմ։

## Գլ. Զ.

1 'Ի նեղութե իւրեանց կանխեսցեն առ իս՝ և ասասցեն. դարձցո՛ւք, և երթիցո՛ւք առ Տր Ած մեր։ 2 *Զի նա եհար զմեզ՝ և նոյն բժշկեսցէ։ վիրաւորեաց՝

բեաց՝ և պատեսցէ զմեզ։ 3 Եւ ողջացուսցէ զմեզ յետ երկուց աւուրց. և յաւուրն երրորդի յարիցուք՝ և կեցցուք առաջի նր՝ և ծանիցուք՝ և զհետ երթիցուք ճանաչել զՏր. իբրև զառաւօտ պատրաստական գտցուք զնա. և եկեսցէ մեզ իբրև զանձրև կանուխ և զանագան յերկրի։ 4 Զի՞նչ արարից քեզ եփրեմ. կամ զի՞նչ անցուցից ընդ քեզ յուդա. զի ողորմութի ձեր իբրև զամպ վաղորդայնոյ՝ և իբրև զցօղ առաւօտու՝ որ անցանէ։ 5 Վս այնորիկ հնձեցի զմարգարէսն ձեր. և կոտորեցի զնս բանիւ բերանոյ իմոյ. և իրաւունք քո իբրև զլոյս ծագեսցին։ 6 Զի ողորմութի կամիմ. և ոչ զպատարագ. և զգիտութի Այ՝ քան զողջակէզս։ 7 Եւ նոքա եղեն իբրև զմարդ ոք՝ որ անցանէ զուխտիւ. անդ արհամարհեցին զիս։ 8 Գաղաադ քաղաք՝ որ առնէ ունայնս. և խռովէ ըզ ջուրս։ 9 Եւ զօրութի քո իբրև զառն աւազակի. թաքուցին քահանայք զճանապարհ. սպանին զսիկիմ. զի զանօրէնութի գործեցին։ 10 Ի տանն Իսրի տեսի զարհաւիրս. անդ պոռնկեցաւ եփրեմ, և պղծեցաւ իէլ։ 11 Եւ յուդա սկիզբն արար կթոց. 'ի դարձուցանել ինձ զգերութի ժողովրդեան իմոյ։

Ա.Կորն. 15.3. Ա.Թագ. 15.22. Ժողով. 4.18. Մատ. 9.13. և 12.7. արօ

## Գլ. Է.

1 Ի բժշկել ինձ զիէլ. և յայտնեսցին չարիքն եփրեմի, և չարիքն շամրնի. զի արարին զստութի. գող մտցէ առ նա. և աւազակ մերկացուսցէ 'ի ճանապարհս նորա։ 2 Զի մտիցեն 'ի միասին. որպ մտիցեն 'ի սիրտս իւրեանց. զամ չարիս նորա յիշեցի. արդ պաշարեցին զնոսա խորհուրդք նոցա՝ յանդիման երեսաց իմոց եղեն։ 3 Չարեօք իւրեանց ուրախ արարին զթագաւորն. և ստութբ իւրեանց զիշխանս։ 4 Ամենեքին շնացեալք՝ իբրև զթոնիր վառեալք յեփել՝ բորբոքեալ 'ի բոցոյ՝ և 'ի զանգուածոյ ճարպոյ. մինչև խմորեսցի նոյն։ 5 Աւուրք թագաւորաց ձերոց՝ սկսան իշխանք զայրանալ 'ի գինւոյ. և ձգեցին զձեռս իւրեանց 'ի ժանդագործս։ 6 Զի բորբոքեցան իբրև զհնոց սիրտք նոցա՝ յանխծանել զնոսա. զգիշեր ամ յագեցաւ քնով եփրեմ. եղև առաւօտ՝ և բորբոքեցան իբրև զբոց հրոյ։ 7 Ամենեքին ջեռան իբրև զհնոց վառեալ. և հուր եկեր զդատաւորս նց. ամ թագաւորք նց անկան. և ոչ ոք էր 'ի նոցանէ՝ որ կարդայր առ իս։ 8 Եփրեմ ընդ ժողովուրդս իւր խառնակիւր. եղև եփրեմ նկան չդարձուցեալ։ 9 Կերին օտարք զզօրութի նր, և նա ոչ գիտաց. ծաղկեցան նորա ալիք՝ և նա ոչ զգաց։ 10 Եւ խոնարհեսցի հպարտութին Իէի յերեսս նորա. և ոչ դարձան առ Տէր Այծ իւրեանց. և ոչ խնդրեցին զնա յամի յայսմիկ։ 11 Եւ էր եփրեմ իբրև զաղաւնի անմիտ՝ որոյ ոչ իցէ սիրտ. յեգիպտոս խրախուսէին. և առ ասորեստանեայս գնացին։ 12 Որպէս երթայցեն՝ արկից 'ի վր նց զվարմ իմ. և իբրև զթռչունս երկնից իջուցից զնս. և խրատեցից զնոսա համբաւով նեղութեց նոցա։ 13 Վայ նոցա՝ զի փախեցին զինէն. և եղուկ են՝ զի ամպարշտեցան յիս. ես փրկեցի զնոսա։ Եւ նոքա բամբասեցին զիս սուտ։ 14 Եւ ոչ աղաղակեցին առ իս սիրտք նոցա. այլ ողբային յանկողինս իւրեանց. և 'ի վր ցորենոյ և գինւոյ յօշէին. † խրատեցան ինև։ 15 Եւ ես զօրացուցի զբազուկս նոցա. և 'ի վերայ իմ խորհեցան չարութի։ 16 Դարձան յոչ ինչ՝ և եղեն իբրև զաղեղն լարեալ։ անկցին 'ի սուր իշխանք նոցա վասն անխրատութե՝ և խստութե լեզուի իւրեանց. զի այս անարգամութի նց յերկրին եգիպտացւոց։

յայտնեցան Ներոյ

## Գլ. Ը.

1 Ի ծոց նր իբրև զերկիր. և իբրև զարծուի 'ի տան Տն. փոխանակ զի անցին զուխտիւ իմով. և յօրէնս իմամ պարշտեցան։ 2 Առ իս աղաղակեսցեն՝ 3 Այծ՝ ծանեաք զքեզ։ Զի իէլ դարձաւ 'ի բարեաց. հալածեցին զնա թշնամիք։ 4 Անձամբ թագաւորեցին՝ և ոչ ինև. տիրեցին, և ոչ ցուցին ինձ. զարծաթ իւրեանց և զոսկի արարին իւրեա կուռս. զի սատակեսցին։ 5 Խորտակեա զորթն քո շամրին. բարկացաւ սրտմտութի իմ 'ի վր նոցա. մինչև 6 յերբ ոչ կարասցեն սրբել զիէլ։ Եւ զայն հիւսն գործեաց՝ և ոչ Այծ. քանզի մոլորեցուցիչ էր որթն քո շամրին։ 7 Զի խորշակահար սերմանեցին. և կործանումն նց ընկալցի զայն. որայ նոցա ոչ արասցէ զօրութի խիւսոյթէ և առնիցէ, զայն օտարք կերիցեն։ 8 Ընկղմեցաւ իէլ. արդ՝ այժմ եղև 'ի մէջ ազգաց իբրև զանօթ անպիտան։ 9 Զի գնացին առ ասորեստանեայս. զուարճացաւ առանձինն եփրեմ. սիրեաց զկաշառս։ 10 Վսն այնորիկ մատնեսցին 'ի մէջ ազգաց. բայց այժմ ընկալայց զնս՝ և դադարեսցեն փոքր մի յօծանելոյ թագաւորս՝ և իշխանս։

Զի

* Օի յաճախեաց եփրեմ զսեղանս․ 11
և եղեն նմա 'ի մեղս սեղանքն սիրե-
ցեալք։ *Գրեցի 'ի վր նր բազմութի. 12
և կրօնք նր յօտարոտիս համարեցան։
*Սեղանք սիրեցեալք․ զի թէպէտ և 13
զոհեսցեն զոհս․ և ուտիցեն զմիսն՝ Տր
ոչ ընկալցի զայն․ արդ՝ յիշեսցէ զանի
րաւութիւնս նց․ և զանօրէնութեանց նց
վրէժխնդրեսցէ․ զի նոքա յեգիպտոս
դարձան․ և 'ի մէջ ասորեստանեայց
պղծութիւնս կերիցեն։*Մոռացաւ իսրայէլ 14
զարարիչ իւր․ և շինեցին մեհեանս․ և
յաճախեաց յուդայ քաղաքս պարս-
պաւորս․ և առաքեցից հուր 'ի քաղաքս
նոցա․ և կերիցէ զհիմունս նոցա։

## Գլ․ Թ․

Մի խնդար իսրայէլ՝ և մի ուրախ լինիր 1
որպէս ժողովուրդք երկրի․ զի պոռն
կեցար յԾյն քումմէ․ սիրեցեր զկաշառս
'ի վր ամ կալոց ցորենոյ։ *Կալք և 2
հնձանք զնոսա ոչ ծանեան․ և գինի
ստեաց նց։ *Ոչ բնակեսցին յերկրի 3
Տն․ բնակեսցի եփրեմ յեգիպտոս․ և 'ի
մէջ ասորեստանեայց պիղծս կերիցեն։
*Ոչ նուիրեցին Տն զգինի․ և ոչ քաղց 4
րացուցին նմա․ զոհք նց իբրև զհաց
սգոյ եղիցի նց․ ամենեքին որք ուտիցեն
'ի նոցանէ, պղծեսցին․ զի հացն իւրց
անձանց իւրց լիցի․ և մի մտցէ 'ի տուն
Տն։* Օ՛ի՞նչ գործիցէք յաւուր տօնի 5
կանի՝ և յաւուրս տօնի Տն։ *Վս այնո 6
րիկ ահա գնասցեն 'ի թշուառութի
եգիպտացւոց․ և ընկալցի զնս մեմփիս․
և թաղեսցէ զնս մաքմաս․ զարծաթ
նոցա 'ի կորուստ ժառանգեսցէ․ և 'ի
յարկս նց փուշ բուսցի։ * Հասեալք 7
են աւուրք վրէժխնդրութե քո՝ հա-
սեալք են աւուրք հատուցման քո՝ և
չարչարեսցի իսրայէլ իբրև զմարգարէ յի-
մարեալ, իբրև զայր մի այսակիր․ 'ի
բազմութէ անիրաւութեանց քոց յաճա
խեցաւ մոլորութի։*Դէտ եփրեմ ը
այ։ մարգարէ՝ որոգայթ գայթագղու 8
թե յամ ճանապարհս նր․ մոլորութի
'ի տան Այ տնկեցին։* ‖Ապականե- 9
ցան ըստ աւուրցն բարձանց․ յիշեսցէ
զանօրէնութիւնս նց․ և վրէժխնդրեսցէ
մեղաց նց։ *Իբրև զխաղող յանապա 10
տի գտի զիսրայէլ․ և իբրև զդիտակ 'ի թզե
նւոջ վաղահասուկ տեսի զհարս նց․
նոքա մտին 'ի բէեղբեգովր․ և օտարացան
յամօթ իւրեանց․ և եղեն գարշելիքն
իբրև զսիրեցեալս։ * Եփրեմ իբրև 11
զհաւ թռեաւ․ և փառք նոցա 'ի ծննդո-
ցեայ՝ և յերկանց՝ և յղութենէ։ *Թէ- 12
պէտ և սնուսցեն զորդիս իւրց, անզա-
ւակեսցին 'ի մարդկանէ․ քանզի՝ վա՜յ է

‖ Դատաւ․ 19․ 25․



նոցա․ մարմին իմ 'ի նոցանէ է։
13 * Եփրեմ որպէս տեսի յորս․ կացուցին
յանդիման զորդիս իւրեանց․ և սկսաւ
եփրեմ հանել 'ի խողխողումն զորդիս
14 իւր։ *Տուր նց Տր․ զինչ տայցես նց․
տուր նոցա արգանդ անորդի, և ստինս
15 ցամաքեալս։ *‖Ամ չարիք նց 'ի գաղ
գաղայ․ զի անդ ատեցի զնոսա վասն
չարութե գնացից նոցա․ 'ի տանէ իմմէ
մերժեցից զնոսա․ և ոչ ևս յաւելից սի-
րել զնոսա․ ամ իշխանք նոցա ապս-
16 տամբք։ *Ախտացան արմատք եփրե
մայ․ չորացան, և պտուղ ոչ ևս տայ-
ցեն․ զի թէպէտ և ծնցին, անզաւակե
17 ցից զցանկալիս որովայնից նց։ *Մեր
ժեսցէ զնս Ած զի ոչ լուան նմա․ և
եղիցին մոլորականք 'ի մէջ ազգաց։

‖ Ովսէ 8․ 5․

## Գլ․ Ժ․

1 Այգի տաշտաւոր պտղալից իսրայէլ․ ը
բազմութե պտղոց նց յաճախեաց
սեղանս․ ըստ բարութե երկրի իւրեանց
2 կանգնեցին արձանս։ *Բաժանեցին
զսիրտս իւրեանց, արդ ապականեսցին․
նա կործանեսցէ զսեղանս նց․ թշուա
3 ռասցին արձանք նց։ *Վասնզի այժմ
ասասցեն․ ոչ գոյ մեր թագաւոր՝ զի 'ի
Տէ ոչ երկեաք․ այլ թագաւոր մեզ զի՞
4 առնիցէ։ *Խօսեն բանս խօսեսցին, պատ
ճառք սուտ են․ ուխտեսցէ ուխտ՝
և բուսցին իբրև զսէզ իրաւունք 'ի
5 կորդ ագարակի։ *Որթուն տանն
ովնայ, եղիցին պանդուխտք բնակիչք
շամրնի․ զի սուգ եառ ժողովուրդ նր
'ի վերայ նր․ և որպէս դառնացուցին զնա․
տոնհար լիցին 'ի վր փառաց նորա՝ զի
6 գերեցան 'ի նմանէն։ *Նա՛ զնա յասո
րեստանեայս կապեալս տարցին․ պա-
տարագ արքային յարիմայ՝ կաշառօք
ընկալցի զեփրեմ․ ամաչեսցէ իսրայէլ 'ի
7 խորհուրդս իւր։ *Մերժեաց շամրին
զթագաւոր իւր․ իբրև զխոտ յերե
8 սայ ջրոյ։ *Նա բարձցին մեհեանքն
օնայ՝ մեղքն իլի․ փուշ և տատասկ
բուսցի 'ի սեղանս նոցա․ ‖ և ասասցեն
լերանց՝ թէ անկերուք 'ի վր մեր․ և
բլրոց՝ եթէ ծածկեցէք զմեզ։
9 *Յորմէհետէ բարձունք եղեն՝ մեղաւ
իսրայէլ․ անդ առին զտեղի․ և մի հասցէ նց
10 'ի բարձունս։ *‖Պատերազմ եկն 'ի վր
որդւոցն անօրէնութե խրատել զնս․ ‖
և ժողովեսցին 'ի վր նոցա ազգք խրա
տել զնոսա․ 'ի վր երկուց անօրէնութեանց
11 նց։ *Եփրեմ երինջ կիրթ՝ սիրէ զհա
կառակութի․ բայց ես հասից 'ի վր գե
ղոյ պարանոցի նորա․ ելից 'ի վր եփրե
մայ․ և անփոյթ արարից զյուդայ․ զօ
12 րասցի 'ի վր նր յակոբ։ *‖Սերմանե-

սամարիոյ

‖ Եսայ․ 2․ 19․
Յայտ․ 6.16.
Ղուկ․ 23. 30.
‖ Դատ․ 20. 1.
‖ Երեմ․ 4. 3.

ցէք ձեզ յարդարութեան. եւ հնձեցէք զպտուղ կենաց. լուսաւո՛ր արարէք ձեզ զլոյս գիտութե. խնդրեցէք զՏր̅ մինչեւ եկեսցէ առ ձեզ արդիւն արդարութե։

13 * Ընդէ՞ր խլխլեցիք զամպարշտութի եւ զանիրաւութիւնս նորա գրգռեցիք. եւ կերայք զպտուղ ստութե. զի յուսացար 'ի կառս քո 'ի բազմութե քո։ 14 * Եւ յարիցէ կորուստ 'ի վ̅ր ժողովրդեան քո. եւ ամենայն պարսպաւորքն քո կործանեսցին. իբրեւ իշխանն սաղմանայ 'ի տանէն յորոամու ‖ յաւուրս պատերազմին՝ զմայր առ որդիս հարկին։ 15 * Նոյնպէս արասցեն ձեզ տունդ Ի̅լի. յերեսաց չարեաց ձերոց. ընկեցան։

‖ Դատ. 8.11.

## ԳԼ. ԺԱ.

1 Ընդ առաւօտս ընկեցաւ թագաւորն Ի̅լի. քանզի տղայ էր Ի̅լ՝ եւ ես սիրեցի զնա. ‖ եւ յեգիպտոսէ կոչեցի զորդի իմ։ 2 * Որչափ կոչէի զնոսա՝ նոյնպէս մերժեցան յերեսաց իմոց. նոքա բահաղիմայ զոհէին՝ եւ դրօշելոց խունկս արկանէին։ 3 * Եւ ես առի զեփրեմ. եւ ըն կալայ զնա 'ի վերայ բազկաց իմոց. եւ ոչ գիտացին, թէ բժշկեմ զնոսա։ 4 * Յապականութե մարդկան ձգեցի զնո կապանօք սիրոյ իմոյ. եւ եղէց նց, ո̅ր որ ածիցէ ոք ապտակ 'ի ծնօտս նր. հայեցայց 'ի նա եւ յաղթեցից նմա։ 5 * Բնակեցաւ եփրեմ յեգիպտոս. եւ ասորեստանեայն թագաւոր նմա. զի ոչ կամեցան դառնալ։ 6 * Եւ տկարացաւ սուր 'ի քաղաքս իւր՝ եւ դադարեաց 'ի ձեռս նր. եւ կերիցեն 'ի խորհրդոց իւրե̅ց։ 7 * Եւ ժողովուրդ նորա կախեալ կայցէ զբնակութե̅ նր. եւ Ա̅Ծ 'ի վ̅ր պատուականաց նր բարկասցի. եւ մի բարձրացուսցէ զնա։ 8 * ‖ Զի՞նչ անցուցից ընդ քեզ եփրեմ. զի՞նչ անցուցից ընդ քեզ. այլ պաշտպան լինիցի՞մ քեզ Ի̅լի. եդից զքեզ իբրեւ զադամայ՝ եւ իբրեւ զսեբոյիմ. դարձաւ սիրտ իմ 'ի նոյն. յուզեցաւ խնամ իմ։ 9 * Եւ ոչ արարից ը̅ս̅ բարկութե սրտմտութե իմոյ. եւ ոչ թողից ջնջել զեփրեմ. զի Ա̅Ծ եմ ես՝ եւ ոչ մարդ. 'ի միջի ձերում սուրբ. եւ ոչ մտից 'ի քաղաքդ։ 10 * Զհետ Տ̅ն գնացից՝ իբրեւ առիւծ մռնչեսցէ. զի ինքն մռնչեսցէ. եւ յիմարեցուսցէ զորդիս ջուրց։ 11 * Զարհուրեսցեն, եկեսցեն իբրեւ զհաւ յեգիպտոսէ. եւ իբրեւ զաղաւնի յերկրէն ասորեստանեայց. եւ պատսպարեցուցից զնոսա 'ի տունս իւրեանց՝ ասէ Տր̅։ 12 * Պաշարեաց զիս ստութե̅ եփրեմ. եւ ամպարշտութե̅ տունն Ի̅լի, եւ յուդայ. արդ ծանեաւ զնոսա Ա̅Ծ եւ ժողովուրդ սուրբ կոչեսցի Ա̅Յ։

‖ Մատթ. 2.15. ‖ Ծննդ. 19. 24. ‖ Ամովս. 4.11.

## ԳԼ. ԺԲ.

1 Իսկ եփրեմ այս չար՝ զհետ եղեւ խորշակի զօրհանապազ. զնանրութի եւ զունայնս յաճախեաց. եդ ուխտ ընդ ասորեստանեայս՝ եւ զիւղ յեգիպտոս տանէր։ 2 * Եւ դատաստան Տ̅ն ը̅ս̅ յուդայ. խնդրել վրէժ յակոբայ. ըստ ճանապարհաց նորա հատուսցէ նմա։ 3 * ‖ Յարգանդի խաբեաց զեղբայր իւր. եւ յաշխատութիւնս իւր զօրացաւ առ Ա̅Ծ։ 4 * ‖ Եւ ժուժկալեաց ընդ հրեշտակի՝ եւ զօրացաւ. լացին, խնդրեցին զիս՝ եւ 'ի տան իմում գտին զիս. անդ պատմեցաւ։ 5 * Եւ Տր̅ Ա̅Ծ ամենակալ եղիցի յիշատակ նոցա։ 6 * Եւ դու յԱ̅Ծ քո դարձցիս. ողորմութի եւ իրաւունս պահեսցես. եւ մերձեսցի առ Տր̅ Ա̅Ծ քո յա̅մ ժամ։ 7 * Քնանք անօրէնութե 'ի ձեռս քանանու, եւ սիրեաց յաղթահարել։ 8 * Եւ ասաց եփրեմ. մեծացայ, եւ գտի զհանգիստ անձին իմոյ. ա̅մ վաստակք նորա մի գտցին նմա. զի վասն անիրաւութեց յանցեաւ։ 9 * Բայց ես Տր̅ Ա̅Ծ քո՝ որ հանի զքեզ յերկրէն եգիպտացւոց՝ դարձեալ բնակեցուցից զքեզ 'ի խորանս՝ ըստ աւուրցն տօնից։ 10 * Եւ խօսեցայց ընդ մարգարէսն. եւ ես զտեսիլս յաճախեցից՝ եւ 'ի ձեռն մարգարէից նմանեցայց։ 11 * Եթէ ոչ գաղաադ էր, ապա սուտ էին 'ի գաղ գաղայ իշխանքն՝ որք զոհէին. եւ սեղանք նց իբրեւ զկրայս 'ի կորդ ագարակի։ 12 * ‖ Եւ գնաց յակոբ 'ի դաշտն ասորւոց. եւ ծառայեաց Ի̅լ վ̅ն կնոջ. եւ 'ի ձեռն կնոջ զգուշացաւ։ 13 * ‖ Եւ 'ի ձեռն մարգարէի եհան Տր̅ զԻ̅լ յերկրէն եգիպտացւոց. եւ մարգարէիւ պահեցաւ։ 14 * Բարկացոյց զիս Ի̅լ եւ զայրացոյց. եւ արիւն նր 'ի վ̅ր նր հեղցի. զնախատինս նր հատուսցէ նմա Տէր։

‖ Ծննդ. 25.25. ‖ Ծննդ. 32. 26. ‖ Ծննդ. 28.5. ‖ Ելից 14. 21. եւ 22.

## ԳԼ. ԺԳ.

1 Ըստ բանիցն եփրեմայ. իրաւունս առն Ա̅Յ Ի̅լի. եւ եդ զայն 'ի բահաղու՝ եւ մեռաւ։ 2 * Եւ արդ՝ դարձեալ յաւելին 'ի մեղանչել. եւ արարին իւրեանց ձուլածոյս, յարծաթոյ իւրց 'ի նմանութի պատկերի կռոց. գործ ճարտարաց նուիրել նոցա. եւ նոքա ասեն, զոհեցէք մարդիկ՝ զի պակասեցան որթք։ 3 * Վ̅ն այնորիկ եղիցին իբրեւ զամպ առաւօտու. եւ իբրեւ զցօղ վաղորդայնոյ՝ որ անցանէ. իբրեւ զփոշի հոսեալ 'ի կալոյ. եւ իբրեւ զծուխ 'ի պատուհանից։ 4 * ‖ Ես եմ Տր̅ Ա̅Ծ քո՝ (որ հաստատեցի զերկինս. եւ հաստատեցի զերկիր՝ որոյ ձեռք հաստատեցին զա̅մ զօրս երկնից. եւ

‖ Եսայ. 43.11.

և ոչ ցուցից քեզ երկնից. և ոչ ցուցից քեզ երթալ զհետ նոցա.) և ես հանի զքեզ յերկրէն եգիպտացւոց. և զԱստուած բաց յինէն ոչ ծանիցես. և փրկիչ ոչ գոյ բաց յինէն։ 5 * Ես հովուէի զքեզ յանապատի յանջրդի երկրի։ 6 * Ըստ արօտի նոցա, և յագեցան՝ և զմտլեցան. և հպարտացան սիրտք իւրեանց. վասն այնորիկ մոռացան զիս։ 7 * Եւ եղէց նոցա իբրև զյովազ. և իբրև ՚ի ճանապարհին ասորեստանեայց։ 8 * Պատահեցայց նոցա իբրև արջ քաղցեալ. և պատառեցից զպաշարանս սրտից նոցա. և կերիցեն զնոսա կորիւնք անտառի. և գազանք վայրի կեղեքեսցեն զնոսա։ 9 * Յապականութեան քում Իսրայէլ՝ ո՞վ իցէ՝ որ օգնիցէ քեզ։ 10 * Ո՞ւր է թագաւորն քո՝ նա փրկեսցէ զքեզ յամենայն քաղաքս քո. իշխեսցէ քեզ՝ զորմէ ասացերն. Տուր ինձ թագաւոր և իշխան։ 11 * Եւ ետու քեզ թագաւոր բարկութեամբ իմով. և կարճեցի սրտմտութեամբ իմով։ 12 * Ժողովեալ անիրաւութեան է եփրեմ. և ծածկեալ կան մեղք նորա։ 13 * Երկունք իբրև ծննդականի հասցեն նմա. դա է որդին քո իմաստուն. վասն այսորիկ այժմիկ չկարասցէ հանդարտել ՚ի բեկման որդւոց։ 14 * ՚Ի ձեռաց դժոխոց ապրեցուցից զնոսա. և ՚ի մահուանէ փրկեցից զնոսա։ Ո՞ւր է յաղթութիւն քո մահ. ո՞ւր է խայթոց քո դժոխք։ Մխիթարութիւն ծածկեալ է յաչաց իմոց։ 15 * Քանզի նա ՚ի մէջ եղբարց զատուսցէ. Ածցէ ՚ի վերայ նոցա Տէր հողմ խորշակի յանապատէ. և ցամաքեցուսցէ զերակս նորա. և աւերեսցէ զաղբիւրս նորա. սա ցամաքեցուսցէ զերկիր նորա. և զամենայն անօթս նորա ցանկալիս։

## Գլ. ԺԴ։

1 Ապականեսցի շամրին. զի ընդդէմ եդարձաւ Աստուծոյ իւրոյ. ՚ի սուր անկցին. և տղայք նորա զքարի հարցին. և յղիք նորա պայթեսցին։ 2 * Դարձիր Իսրայէլ առ Տէր Աստուած քո. զի տկարացար յանօրէնութիւնս քո։ 3 * Առէք ընդ ձեզ բանս՝ և դարձարո՛ւք առ Տէր Աստուած ձեր. և ասացէք ցնա. կարող ես թողուլ զմեղս. զի մի առնուցուք զանիրաւութիւն՝ այլ ընդունիցիք զբարիս. և հատուսցուք ընդ պտուղ շրթանց մերոց. և վայելեսցեն 4 ՚ի բարութեան սիրտք ձեր։ * Ասորեստան նեայն ոչ փրկէ զմեզ. և յերիվարս ոչ հեծցուք. և մի ևս ասասցուք աստուածս՝ ձեռագործս մեր. զի որ ՚ի քեզդ 5 է՝ ողորմեսցիս որբոց։ * Բժշկեցից զբնակութիւնս նոցա. և սիրեցից զնոսա համօրէն. զի դարձաւ բարկութիւն իմ ՚ի 6 նոցանէ։ * Եղիցի իբրև զցօղ Իսրայէլի. և ծաղկեսցի իբրև զշուշան. և արձակեսցէ զարմատս իւր իբրև զլիբանոս։ 7 * Արձակեսցին ոստք նորա. և եղիցի իբրև զձիթենի պտղալից. և բուրեսցի հոտ նորա իբրև զկնդրկի։ 8 * Դարձցին, և նստցին ընդ յարկաւ նորա. կեցցեն, և հաստատեսցին ցորենով. և ծաղկեսցի իբրև զորթ յիշատակ նորա. և իբրև զգինի լիբանանու եղիցի։ 9 * Եփրեմայ, զի՞ ևս կայ նորա և կռոց։ Ես խոնարհեցուցի զնա՝ և ես զօրացուցից զնա. ես իբրև զայգի պտղաբեր՝ յինէն գտաւ պտուղ ՚ի քեզ։ 10 * Ո՞վ է իմաստուն՝ և իմասցի զայս. հանճարեղ՝ և ծանիցէ զայս. զի ուղիղ են ճանապարհք Տեառն. և արդարք գնասցեն ՚ի նոսա. և ամպարիշտք տկարասցին ՚ի նոսա։

Margin notes: սամարիայ; չյետա_; գործս; Եղէց; և յիշա_; տակ նր; եէրն

Margin notes (left): և իբրև; Կորնթ. 15.54.; Եբր. 2.14.; Եզեկ. 19.12.

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՅՈՎԵԼԱՅ։

Գլուխ Առաջներորդ։

Պատգամ Տեառն եղև առ յովէլ որդի բաթուէլի։ 1



ԼՈՒԱՐՈՒՔ ԶԱՅՍ ԾԵՐՔ. 2 և ունկն դիք ամենայն բնակիչք երկրի. եթէ եղեալ է այսպիսի ինչ յաւուրս ձեր. կամ յաւուրս հարց ձերոց։ 3 * Պատմեցէք զայս որդւոց ձերոց. և որդիք ձեր որդւոց իւրեանց. և որդիք նոցա յազգ յայլ։ 4 * Զմնացորդս թրթրոյ եկեր մարախ. † և զմնացորդս ջորեկի եկեր երևիլ։ 5 * Զարթիցարո՛ւք արբեալք ՚ի գինւոյ. և լացէք՝ և ողբացարո՛ւք ամենեքեան՝ որք ըմպէք զգինի յարբենալ. զի բարձաւ ՚ի բերանոյ ձերմէ ուրախութիւն և խնդութիւն։ 6 * Զի ազգ մի ել յերկիր իմ՝ հզօր և անթիւ. ատամունք նորա ատամունք առիւծու. և ժանիք նորա կորեան առիւծու։ 7 * Արար զորթ իմ յապականութիւն. և զթզենիս իմ ՚ի խորտակումն.

Margin notes: † շնա_; յուղս ճա; րակոյ; եէր ջո_; րեկն.

յուղելով յուղեալ' և ընկեց զնա ։ և ըմբեցոյց զուռս նր ։ 8 *Ողբա առ իս իբրև զհարսն քրձազգած ՚ի վր առն իւրոյ ամուսնոյ։ 9 *Բարձան զոհք' և սպանդք ՚ի տանէ Տն. սուգ առէք քահանայք պաշտօնեայք սեղանոյ։ 10 *Զի թշուառացան դաշտք. սուգ առցէ երկիր' զի թշուառացաւ ցորեան' ցամաքեցաւ գինի' նուաղեցաւ ձէթ ։ 11 *Ամաչեցէք մշակք ստացուածովք ՚ի վր ցորենոյ' և գարւոյ. զի կորեան կութք յագարակէ։ 12 *Ցամաքեցաւ որթ. նուաղեցաւ թուզ' և նուռն. արմաւ' և խնձոր. և ամ փայտ ագարակի գօսացաւ ։ զի յամօթ արարին զուրախութի որդիք մարդկան ։ 13 *Արձագածք եղերուք' կոծեցարուք քահանայք. սուգ առէք պաշտօնեայք սեղանոյ. մտէք, ննջեցէք խորգով պաշտօնեայք այ. զի պակասեցան ՚ի տանէ այ ձերոյ զոհք' և սպանդք։ 14 *Սրբեցէք պահս. քարոզեցէք պաղատանս. ժողովեցէք զծերս ամ բնակիչք երկրիդ ՚ի տուն այ ձերոյ. և աղաղակեցէք առ Տր սրտի մտօք ։ 15 *Վայ ինձ. վայ ինձ. վայ ինձ յաւուր յայնմիկ. զի մերձ է օր Տն. իբրև ՚ի թշուառութի ՚ի թշուառութէ հասցէ ։ 16 *Առաջի աչաց ձերոց պակասեցան կերակուրք ՚ի տանէ Այ ձերոյ' ուրախութի և խնդութի ։ 17 *Խայտացին երինջք ՚ի մսուրս իւրե. ապականեցան գանձք. տապալեցան շտեմարանք. զի խորշակահար եղև ցորեանն ։ 18 *Զինչ ամբարեցից ՚ի նոսա. լացին դարք անդեոց' զի ոչ գոյր նց արօտ ։ և հօտք խաշանց սատակեցան ։ 19 *Առ քեզ Տր աղաղակեցից. զի հուր սատակեաց զգեղեցկութիւն անապատի. և բոց ծախեաց զամ փայտս ագարակի ։ 20 *Եւ երէ վայրի ՚ի քեզ հայեցաւ. զի ցամաքեցան վտակք ջուրց ։ և հուր եկեր զգեղեցկութի անապատի ։

## Գլ: Բ։

1 Փող հարէք ՚ի սիոն. քարոզ կարդացէք ՚ի լերին սրբութե իմոյ. ժողովեսցին ամ բնակիչք երկրի. զի հասեալ է օր Տն զի մերձ է ։ 2 *Օր խաւարի' և մգի. օր ամպոյ' և մառախղոյ ։ իբրև առաւօտ տարածեսցի ՚ի վր լերանց զօր բազում, և հզօր. նման նր ոչ եղև յաւիտենից. և զհետ նր ոչ ևս յաւելցի լինել յազգաց մինչև յազգս ։ 3 *Առաջի նր հուր ծախիչ' և վերջ նր բոց բորբոքեալ ։ իբրև զդրախտ փափկութե եր կիրդ առաջի նր. և զկնի նր դաշտ ապականութե. և ապրեալ ոչ իցէ ՚ի նմանէ ։ 4 *Իբրև տեսիլ երիվարաց տեսիլ նր. իբրև զհեծեալ արշաւեսցեն ։

5 *Իբրև շաչիւն կառաց ՚ի վր գլխոց լերանց ասպատակեսցեն ։ իբրև զձայն բոցոյ հրոյ որ ուտէ զեղէգն. և իբրև զօր բազում և հզօր պատրաստեալ ՚ի պատերազմ ։ 6 *Յերեսաց նոցա խորտակեսցին ազգք. և ամ դէմք իբրև զայրեցած պուտնս ։ 7 *Իբրև զախոյեանս յարձակեսցին. և իբրև զարս պատերազմօղս ելցեն ՚ի վերայ պարսպաց ։ իւրաքանչիւր զիւր ճանապարհս գնասցեն. և մի խոտորեսցին ՚ի շաւղաց իւրեանց ։ 8 *Այր յեղբօրէ' և յընկերէ իւրմէ մի զատցի. ծանրացեալք զինուք իւրեանց գնասցեն' և նետիւք իւրեանց անկցին' և մի վախճանեսցին ։ 9 *Հասցեն ՚ի վր քաղաքի. և ընթասցին ՚ի վր պարսպաց. ելցեն յապարանս' և մտցեն ընդ պատուհանս իբրև զգողս ։ 10 *Յերեսաց նր խռովեսցի երկիր. և երկինք շարժեսցին. արեգակն և լուսին խաւարեսցին. և աստեղք ծածկեսցեն զլոյս իւրեանց ։ 11 *Եւ Տր տացէ զձայն իւր առաջի երեսաց զօրութե իւրոյ ։ զի բազում է յոյժ բանակ նորա. և հզօր գործ պատերազմաց նր. զի մեծ է օր Տն. մեծ և երևելի յոյժ. և ով իցէ նմա բաւական ։ 12 *Եւ արդ' ասէ Տէր Այ ձեր. դարձարուք առ իս յամ սրտէ ձերմէ. պահօք' և լալով' և կոծով ։ 13 *Պատառեցէք զսիրտ ձեր' և մի զհան դերձս. և դարձարուք առ Տր Այ ձեր' զի ողորմած' և գթած է' երկայնամիտ' և բազում ողորմ. որ զղջանայ ՚ի վր չարեաց ։ 14 *Ով գիտէ' եթէ դարձցի և ապաշաւեսցէ. և թողցէ զկնի իւր օրհնութի. զոհս և սպանդ Տն այ մերում ։ 15 *Փող հարէք ՚ի սիոն. սրբեցէք պահս. 16 քարոզկարդացէք պաղատանս ։ *Ժողովեցէք զժողովուրդս ։ սրբեցէք զեկեղեցի. ընտրեցէք զծերս. ժողովեցէք զտղայս ստնդիացս. ելցէ փեսայ ՚ի սենեկէ իւրմէ' և հարսն յառագաստէ ։ 17 *Ընդ աշտիճանս և ընդ սեղանս լասցեն քահանայք' և պաշտօնեայք Տն. և ասասցեն. խնայեա Տր ՚ի ժողովուրդս քո' և մի տար զժառանգութի քո ՚ի նախատինս տիրել ՚ի վր նր ազգաց. զի մի ասասցեն ՚ի հեթանոսս' թէ ուր է Այ նոցա ։ 18 *Եւ նախանձեցաւ Տր վն երկրի իւրոյ. և խնայեաց ՚ի ժողովուրդ իւր ։ 19 *Եւ պատասխանի ետ Տր ժողովրդեան իւրոյ' և ասէ. ահաւասիկ ես առաքեմ զցորեան, և զգինի' և զիւղ. և լցջիք ՚ի նոյանէն. և ոչ ևս տաց զձեզ ՚ի նախատինս ազգաց ։ 20 *Եւ զհիւսիսայինն հալածեցից ՚ի ձէնջ. և մերժեցից զնա յերկիր անջուր. և ապականեցից զառաջ նորա ՚ի

ծովն

ծովն առաջին. և զվերջն նր 'ի ծովն վեր
ջին. և ելցէ շարաւ նորա. և բուրեսցի
հոտ նր. զի մեծացան գործք նորա:
21 * Քաջալերեաց երկիր. խնդա, և ու_
րախ լեր. զի մեծացոյց Տր զառնել իւր
ընդ քեզ: 22 * Քաջալերեաց էրէվայրի՝
զի դալարացան դաշտք անապատի. զի
ծառ ետ զպտուղ իւր. որթ և թզենի
զզօրութի իւրեանց: 23 * Որդիք սիոնի:
խնդացէք՝ և ուրախ լերուք 'ի Տր Այ
ձեր. զի ետ ձեզ Տր զկերակուր արդա
րութեան: տեղասցի ձեզ անձրև կա_
նուխ՝ և անագան իբրև զառաջինն:
24 * Եւ լցցին կալք ցորենոյ. և զեղցին
հնձանք գինւոյ՝ և իւղոյ: 25 * Եւ հատու
ցից ձեզ ամացն փոխանակ՝ յորս եկեր
մարախն՝ և ջորեակն՝ և թրթուրն՝ զօր
իմ մեծ՝ զոր առաքեցի 'ի մէջ ձեր: 26 * Եւ
ուտելով կերիջիք՝ և յագեսջիք. և օրհ
նեսջիք զանուն Տն այ ձերոյ՝ որ արար
ընդ ձեզ սքանչելիս. և մի ևս ամաչես
ցէ ժողովուրդ իմ յաւիտեան: 27 * Եւ
ծանիջիք՝ եթէ 'ի մէջ իէլի եմ ես. և ես
Տր Այ ձեր՝ և չիք ոք բաց յինէն. և ոչ
ամաչեսցէ ժողովուրդ իմ յաւիտեան:
28 * Եւ եղիցի յետ այսորիկ ‖ հեղից 'յոգ
ւոյ իմմէ 'ի վերայ ամ մարմնոյ. և մարգա
րէասցին ուստերք ձեր՝ և դստերք ձեր.
և ծերք ձեր երազովք երազեսցին. և
երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն:
29 * Եւ 'ի վերայ ծառայից իմոց՝ և 'ի վերայ
աղախնայց իմոց յաւուրս յայնոսիկ հե
ղից 'յոգւոյ իմմէ՝ և մարգարէասցին:
30 * Եւ տաց նշանս յերկինս 'ի վեր՝ և յեր
կիր 'ի խոնարհ. արիւն՝ և հուր՝ և մրրիկ
ծխոյ: 31 * ‖ Արեգակն դարձցի 'ի խաւ_
ար՝ և լուսին յարիւն. մինչչև եկեալ
իցէ օր Տն մեծ՝ և երևելի: 32 * ‖ Եւ եղի
ցի՝ ամ որ կարդասցէ զանուն Տն, կեց
ցէ: զի 'ի լեառն սիոն՝ և յեմ եղիցի
ապրեալ՝ որպէս և ասաց Տր. և աւետարա
նել զորս Տր կոչեսցէ առ ինքն:

‖ Եսայ. 44. 3. Գործ. 2. 17.
‖ Վեր. 2. 10.
‖ Մատ. 24. 29. Ղուկ. 21. 25.
‖ Հռոմ. 10. 13.

## ԳԼ: Գ.

1 Զի ահաւասիկ ես յաւուրսն յայ_
նոսիկ՝ և 'ի ժամանակին յայն_
միկ՝ յորում դարձուցից զգերութին
հրէաստանի և եմի: 2 * Եւ ժողովեցից
զամ ազգս՝ և իջուցից զնս 'ի ձորն յոսա
փաթու. և դատեցից զնոսա անդ՝ վն
ժողովրդեան իմոյ՝ և ժառանգութե
իմոյ իէլի. որք ցրուեցան ընդ ամ ազգս.
և զերկիր իմ բաժանեցին: 3 * Եւ 'ի վն
ժողովրդեան իմոյ վիճակս արկա_
նէին. և ետուն զպատանեակս կաքէնս
պոռնկաց. և զաղջկունս վաճառէին
ընդ գինւոյ՝ և ըմպէին: 4 * Եւ դուք
ևս տակաւին ինձ ծուր և ծայդան՝ և
ամ գաւիլէա այլազգեաց. միթէ հա_
տուցումն ինչ հատուցանիցէք, կամ
ոխս պահիցէք ինձ. վաղվաղակի տագ
նապաւ հատուցից զհատուցումն ձեր
5 'ի գլուխս ձեր: * Փոխանակ զի զար_
ծաթն՝ և զոսկին առիք. և զընտիր ըն
տիր՝ և զգեղեցիկ անօթսն տարայք 'ի
6 մեհեանս ձեր: * Եւ զորդիսն յուդայ՝
և զորդիսն եմի վաճառեցիք որդւոցն
յունաց. զի մերժեցիք զնս 'ի սահմա_
7 նաց իւրեանց: * Արդ՝ ես կանգնեցից
զնս 'ի տեղւոջէ՝ ուր վաճառեցիք զնս
անդ. և հատուցից զհատուցումն ձեր
8 'ի գլուխս ձեր: * Եւ մատնեցից զուս_
տերս ձեր՝ և զդստերս ձեր 'ի ձեռս
որդւոցն յուդայ. և վաճառեսցեն զնս
'ի գերութի յազգս հեռաւոր՝ և բա_
9 ցական. զի Տր խօսեցաւ: * Քարոզ
կարդացէք զայդ յազգս. ժամ տուք
մարտի. զարթուցէք զպատերազմօղս:
ժողովեցարուք, և ելէք ամ արք պա_
10 տերազմօղք: * Կոտորեցէք զխոփս ձեր
'ի սուսերս: և զգերանդիս ձեր 'ի գե_
ղարդունս. տկարն խրախուսեսցէ՝
11 թէ հզօր եմ ես: * Ժողովեցարուք, և
մտէք ազգք ամ շուրջանակի. անդր
դումարեցարուք. հանդարտն պատե_
12 րազմօղ եղիցի: * Զարթիցեն, և
ելցեն ամ ազգք 'ի ձորն յոսափաթու.
զի անդ նստայց դատել զամ ազգս շուր
13 ջանակի: * ‖ Արկէք զմանգաղ՝ զի հա
սեալ են կութք. մտէք, կոխեցէք, զի
լցեալ է հնձան՝ և զեղուն դուբք. զի
14 բազմացան չարիք նոցա: * Ձայնք հն_
չեցին 'ի ձորն դատաստանի. զի մերձ է
15 օր Տն 'ի ձորն դատաստանի: * ‖ Արե
գակն և լուսին խաւարեսցին. և աս_
տեղք ծածկեսցեն զլոյս իւրեանց:
16 * ‖ Եւ Տր 'ի սիոնէ գոչեսցէ. և յեմէ
տացէ զձայն իւր. և շարժեսցին երկինք
և երկիր: * Այլ Տր խնայեսցէ 'ի ժողո
վուրդ իւր՝ և զօրացուսցէ զորդիսն իէլի:
17 * Եւ ծանիջիք թէ ես եմ Տր Այ որ
բնակեալ եմ 'ի սիոն լերին սրբութե իմոյ:
և եղիցի եմ սրբ. և այլազգիք այլ ոչ ևս
18 անցցեն ընդ նա: * ‖ Եւ եղիցի յաւուր
յայնմիկ բղխեսցեն լերինք զքաղցրու
թի. և բլուրք յորդեսցեն զկաթն. և
ամ աղբիւրք յուդայ բղխեսցեն զջուրս:
և աղբիւր 'ի տանէ Տն ելցէ. և արբու
19 ցէ զձորն վիճակաց: * Եգիպտոս յապա
կանութի եղիցի. և եդոմ 'ի դաշտ ապա
կանութե՝ յանիրաւութեց որդւոց յուդայ.
փոխանակ զի հեղին զարիւն արդար 'ի
20 մէջ իւրեանց: * Հրէաստան յաւիտեան
բնակեսցի. և եմ յազգաց յազգս:
21 * Եւ խնդրեցից զարիւն նց՝ և ոչ արդա
րից անպարտ. և Տր բնակեսցի 'ի սիոն:

ԱՄԷՆ.

‖ Յայտ. 14. 15.
‖ Վեր. 2. 10. և 31.
‖ Երեմ. 25. 30. Ամովս. 1. 2.
Ամովս. 9. 13.

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱՄՈՎՍԱՅ:

Գլուխ Առաջնորդ:

Պատգամք Ամովսայ՝ որք եղեն յԱկկարիմ Թեկուայ, զորս ետես 'ի վերայ Եմի. յաւուրս Ոզիայ արքային Հրէաստանի. և յաւուրս Յերոբովամայ որդւոյ Յովասայ արքային Իսրայէլի, երկու ամօք յառաջ քան զշարժումն: 1

|| Զաքա. 14. 5.

|| Երեմ. 25. 30. Յովէլ 3. 16.

ԵՒ ԱՍԷ. ՏՐ̃ Ի ՍԻՈՆԷ բարբառեցաւ. և յԵրուսաղեմէ ետ զձայն իւր. և սուգ առին արօտք հօտից. և ցամաքեցան բարձունք Կարմեղայ: 2 * Եւ ասէ Տր̃ 'ի վր̃ երից անօրէնութեանց Դամասկեայ՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նմանէ: փոխանակ զի կորէին զյղիս Գաղաադացւոց սղոցօք երկաթեօք: 3 * Եւ առաքեցից զհուր 'ի տունն Ազայէլի. և կերիցէ զհիմունս որդւոյ Ադերայ: 4 * Եւ խորտակեցից զնիգս. և սատակեցից զբնակիչս դաշտացն Օնայ. և կոտորեցից զազգն յարանց Խառանու. և գերեսցի ընտիր ժողովուրդն Ասորւոց՝ ասէ Տր̃: 5 * Այսպ ասէ Տր̃ 'ի վր̃ երից ամպարշտութեանցն Գազայ. և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նոցանէ: փոխանակ զի գերեցին զգերութին Սաղոմոնի արգելուլ յԵդովմ: 6 * Եւ առաքեցից հուր 'ի վր̃ պարսպացն Գազայ. և կերիցէ զհիմունս նորա: 7 * Եւ սատակեցից զբնակիչս յԱզօտայ. և բարձցի ազգ յԱսկաղոնէ. և ածից զձեռն իմ 'ի վր̃ Ակկարօնի. և կորիցեն մնացորդք այլազգեաց՝ ասէ Տր̃ Տր̃: 8 * Այսպէս ասէ Տր̃ 'ի վր̃ երից ամպարշտութեանցն Ծուրայ՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նմանէ: փոխանակ զի արգելին զգերութին Սաղոմոնի յԵդոմ: և ոչ յիշեցին զուխտ եղբարց: 9 * Եւ առաքեցից զհուր 'ի վր̃ պարսպացն Ծուրայ. և կերիցէ զհիմունս նր̃: 10 * Այսպ ասէ Տր̃ 'ի վր̃ երից ամպարշտութեանցն Եդովմայ՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նոցանէ: փոխանակ զի հալածեաց սրով զեղբայր իւր. և ապականեաց զեղբայր յերկրի. և յափշտակեաց 'ի վկայութի զսոսկումն իւր. և զյանդգնութի պահեաց 'ի հակառակութի: 11 * Եւ առաքեցից զհուր 'ի Թեմանն. և կերիցէ հուր զհիմունս պարսպացն նորա: 12 * Այսպէս ասէ Տր̃ 'ի վր̃ երից ամպարշտութեանցն որդւոցն Ամոնայ՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նոցանէ. փոխանակ զի հերձուին զյղիս Գաղաադացւոց՝ զի ընդարձակեսցեն զսահմանս իւրեանց: 13 * Բորբոքեցից զհուր 'ի վր̃ պարսպացն Հռաբայ. և կերիցէ զհիմունս աղաղակաւ յաւուր պատերազմի: և շարժեսցի յաւուր վախճանի իւրոյ: 14 * Եւ գնասցեն 'ի գերութի թագաւորք նր̃. քուրմք նոցա՝ և իշխանք նոցա 'ի միասին. ասէ Տր̃: 15

Եւ ապականեաց ողորմութին նորա

Գլ: Բ:

1 Այսպ ասէ Տր̃. 'ի վր̃ երից ամպարշտութեանցն Մովաբու՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նմանէ. փոխանակ զի այրեցին զոսկերս թագաւորաց Եդովմայեցւոց 'ի մոխիր: 2 * Առաքեցից զհուր 'ի վր̃ Մովաբայ. և կերիցէ հուր զհիմունս քաղաքացն նր̃. և մեռցի 'ի տկարութե Մովաբ աղաղակաւ, և ձայնիւ փողոյ: 3 * Եւ սատակեցից զդատաւոր 'ի նմանէ. և զամ իշխանս նր̃ կոտորեցից ընդ նմին՝ ասէ Տր̃: 4 * Այսպ ասէ Տր̃ 'ի վր̃ երից ամպարշտութեանց որդւոցն Յուդայ՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նմանէ. փոխանակ զի մերժեցին զօրէնս Տն̃ և զհրամանս նր̃ ոչ պահեցին. և մոլորեցուցին զնս̃ սնոտեօք իւրեանց, զորս արարին: զորոց զհետ գնացին հարքն նոցա: 5 * Առաքեցից զհուր 'ի վր̃ Հրէաստանի՝ և կերիցէ զհիմունս Եմի: 6 * Այսպ ասէ Տր̃, 'ի վր̃ երից ամպարշտութեանց Իղի՝ և 'ի վր̃ չորից ոչ դարձայց 'ի նմանէ. և փոխանակ զի վաճառեցին զարդարն արծաթոյ՝ և զտնանկն ընդ կօշկաց: 7 * Որք կոխեն զհող երկրի. և կռփեն զգլուխս աղքատաց. և զճանապարհս խոնարհաց թիւրեն: և հայր և որդի առ մի բոզ մտանեն. զի պղծեսցեն զանուն իմ իւրեանց: 8 * Եւ զձորձս իւրեանց առագաստս ձգէին ընդ ինքեանս՝ և ընդ սեղանս. և զգինի զրպարտութեանց ըմպէին 'ի տան իմ իւրեանց: 9 * || Բայց ես բարձի զամուրհացին յերեսաց նց̃. որոյ բարձրութի իւր բարձրութի մայրի. և հզօր է իբրև զկաղնի: և բար.

Եդովմա_ ցին

սնոտիք

|| Թուոց 21. 24. 2. Օր. 2. 24.

բարձի զպատուղ նորա 'ի վերուստ. և զարմատս նր 'ի ներքուստ: *||Եւ ես 10 հանի զձեզ յերկրէն եգիպտացւոց. և ածի զձեզ յանապատի ամս քառասուն. ժառանգեցուցանել զերկիրն ամուրհացւոց: *Եւ առի յորդւոցն ձերոց 'ի 11 մարգարէս. և յերիտասարդացն ձերոց յուխտաւորս. միթէ ոչ իցէ այդպէս որդիք Իղի՝ ասէ Տր: *Եւ արբուցանէիք ուխտաւորացն իմոց գինի. և մարգարէիցն պատուիրէիք, զի մի մարգարէասցեն: *Ա̃ա այնորիկ աՀաւադիկ 13 ես Հոլովեցուցանեմ 'ի ներքոյ ձեր. զոր օրինակ Հոլովիցի սայլ լի որանաւ: *Եւ կորիցէ փախուստ յընթացողէն. 14 և որ զօրաւորն իցէ՝ մի զօրասցի 'ի զօրութեն իւրում. և պատերազմողն մի ապրեցուսցէ զանձն իւր: *Եւ աղեղ 15 նաւորն մի կարասցէ ունել զդէմ. և որ արագն իցէ ոտիւք՝ մի ապրեսցի. և հեծեալ մի ապրեցուսցէ: *Եւ մի գտցի 16 սիրտ իւր 'ի զօրութեն: մերկն Հալածեսցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր:

Գլ: Գ:

1 Լուարուք զպատգամս զայս՝ զոր խօսեցաւ Տր 'ի վր ձեր տունդ Իղի. և 'ի վր ամ ազգաց՝ զորս հանի յերկրէն եգիպտացւոց: *Բայց զձեզ ընտ 2 րեցի յամ ազգաց երկրի: վն այնորիկ 'ի ձէնջ խնդրեցից զվրէժ ամ չարեաց ձերոց: *Միթէ գնասցեն ամենևին 3 երկու 'ի միասին՝ թէ ոչ ճանաչիցեն զմիմեանս: *Եթէ գոչիցէ առիւծ 4 յանտառէ՝ և ոչ իցէ որս արարեալ նր: եթէ տացէ կորիւն զձայն իւր 'ի մայրւոյ իւրմէ, և ոչ ինչ իցէ յափշտակեալ նր: *Եթէ անկանիցի թռչուն յեր 5 կիր առանց որսորդի. եթէ ճայթիցէ որոգայթ 'ի վերայ երկրի, և ոչ ինչ իցէ ըմբռնեալ: *Եթէ Հարկանիցի փող 6 'ի քաղաքի. և ազգն ոչ խռովիցի. եթէ իցեն չարիք 'ի քաղաքի՝ և Տր չիցէ արարեալ: *Ա̃ա այնորիկ ոչ արասցէ Տր 7 Ած իրս ինչ, եթէ ոչ յայտնեսցէ ըզխրատն ծառայից իւրոց մարգարէից: *Առիւծ գոչեսցէ՝ և ով իցէ՝ որ ոչ 8 սարսիցէ: Տր Ած խօսեցաւ՝ և ով իցէ՝ որ ոչ մարգարէասցի: *Պատմեցէք 'ի 9 գաւառս ասորեստանեայց. և 'ի գաւառս երկրին եգիպտացւոց. և ասացէք՝ ժողովեցարուք 'ի լեառն շամրնի. և տեսէք սքանչելիս բազումս 'ի մէջ նր. և զռնութի 'ի մէջ նր: *Ոչ ծանեաւ 10 զլինելոց եղեռն՝ ասէ Տր. որք գանձեն զանօրէնութի, և զթշուառութի 'ի գաւառս իւրեանց: *Վասն այնորիկ 11 այսպէս ասէ Տր Ած Տիւրոս երկիրդ՝

որ շուրջ զքև է, աւերեսցի. և խորտակեսցի 'ի քէն ամ զօրութի քո. և յափշտակեսցին գաւառք քո: *Որ այնպ 12 ասէ Տր. զոր օրինակ եթէ կորզեսցէ թափել Հովիւ 'ի բերանոյ առիւծու՝ ոսկերս երկուս կամ բլթակ մի ունկան. այնպ զերծցին որդիքն Իղի, որք բնակեալ են 'ի շամրին դէմյանդիման ազգին. և 'ի մէջ դամասկացւոց:

13 *ԲաՀանայք լուարուք. և վկայութի դիք տանդ յակոբայ՝ ասէ Տր ամենակալ: 14 *Օր յաւուր յայնմիկ յորժամ խնդրեցից զվրէժ ամպարշտութեցն Իղի 'ի նմանէ՝ առից վրէժ և զսեղանոյն բեթելայ. և փշրեսցին եղջիւրք սեղանոյն՝ և անկցին յերկիր: 15 *Եւ խորտակեցից զապարանսն թևաւորս 'ի վր ամարաստունն ապարանիցն. և ապականեսցին ապարանքն փղոսկրեայք. և բազում և այլ ապարանք անկցին՝ ասէ Տր:

Գլ: Դ:

1 Լուարուք զբանս Տն երինջք բասանու՝ որք էք 'ի լերինս շամրնի. որք զրկէք զաղքատս՝ և առնուք Հարկանէք զտնանկն. որք ասէիք ցտեարս ձեր՝ մատուցէք մեզ զգինի՝ զի արբ 2 ցուք: *Երդնու Տր 'ի սրբութիւն իւր. եթէ աՀա աւուրք եկեսցեն 'ի վր ձեր. և առցեն զձեզ զինուք. և զդոսա՝ որք ընդ ձեզ են՝ արկցեն 'ի սանս ջեռու 3 ցելոյ: *Եւ ելանիցէք մերկք միմեանց դէմ ընդդէմ. և անկցիք 'ի լերինն ռեմանայ՝ ասէ Տր: 4 *Մտէք 'ի բեթէլ՝ և ամպարշտեցարուք. և 'ի գաղգաղայ յաճախեցէք ամպարշտել. և մատուցէք զզոՀս ձեր ընդ առաւօտս. և յերիր 5 աւուր զտասանորդ ձեր: *Ընթեռնուլին օրէնս արտաքոյ. և կոչեցին խոստովանութիւն. պատմեցէք թէ զայս սիրեցին որդիքն Իղի՝ ասէ Տր: 6 *Եւ ես արկի զձեզ ցաւս ատամանց յամ քաղաքս ձեր. և կարօտութի Հացի յամ տեղիս ձեր. և ոչ դարձարուք առ իս՝ ասէ Տր: 7 *Եւ արգելի 'ի ձէնջ զանձրև երեք ամսովք յառաջ քան զկութս. 'ի մի քաղաք տեղացից՝ և 'ի միւս քաղաք ոչ տեղացից. զմի վիճակ թացից. և 'ի միւսն յորում ոչ տեղացից, ցամաքեսցի: 8 *Եւ ժողովեսցին երկու և երեք քաղաքք 'ի մի քաղաք ըմպել զջուր՝ և մի յագեսցին. և ոչ դարձայք առ իս՝ ասէ 9 Տր: *||Հարի զձեզ տապով. և արկի զձեօք դալուկն. և յաճախեցիք 'ի պարտէզս ձեր. յայգիս և 'ի թզենիս ձեր՝ և 'ի ձիթենիս ձեր. և զթզենիս ձեր եկեր թրթուր. սակայն և այնպ ոչ դարձայք՝ ասէ Տր: 10 *Առաքեցի 'ի վր ձեր զմաՀ

Ե. 14. 21. Ովսէ. 8. 2.

||Անգէ. 2. 18.

զմահ 'ի ճանապարհին Եգիպտացւոց. և կոտորեցի սրով զերիտասարդս ձեր հանդերձ գերութեամբ երիվարաց ձերոց. և ծախեցի զբանակս ձեր հրով բարկութեան իմոյ. սակայն և այնու ոչ դարձայք առ իս՝ ասէ Տր։ * 11 Կործանեցի զձեզ՝ որպէս կործանեաց Ած զսոդոմ և զգոմոր. և եղէք իբրև զխանձող զերծեալ 'ի հրոյ. սակայն և այնու ոչ դարձայք առ իս՝ ասէ Տր։ * 12 Վա այնորիկ այսպէս արարից զքեզ. բայց զի այնու առնելոց եմ քեզ. պատրաստեա կարդալ զանուն Տն Այ քո Իղի։ * 13 Զի ահաւասիկ որ հաստատէ զերկինս. և հաստատէ զհողմն՝ և պատմէ 'ի մէջ մարդկան զօծեալ իւր. առնէ առաւօտ և մէգ. և ելանէ 'ի վր բարձանց երկրի. Տր Ած ամենակալ անուն է նր։

## ԳԼ: Ե:

1 Լուարուք զբան Տն Այ, զոր ես առից 'ի վերայ ձեր ողբս. անկաւ տունդ Իղի. և ոչ ևս յաւելցի յառնել։ * 2 Կոյսն Իղի կործանեցաւ յերկրի իւրում. և չիք ոք, որ կանգնիցէ զնա։ * 3 Քանզի այսպէս ասէ Տր Տր. 'ի քաղաքէ յորմէ ելանէին հազարք, մնասցէ հարիւր. և յորմէ ելանէին հարիւր, մնասցէ տասն տանդ Իղի։ * 4 Քանզի այսպէս ասէ Տր առ տունդ Իղի. խնդրեցէք զիս՝ և կեցջիք։ * 5 Եւ մի խնդրէք զբեթէլ. և 'ի գաղգաղայ մի մտանէք. և 'ի ջրհորն երդման մի ելանէք. զի գաղգաղայ գերելով գերեսցի. և բեթէլ եղիցի իբրև զչեղեալ։ * 6 Խնդրեցէք զՏր, և կեցջիք. զի մի բորբոքեսցի իբրև զհուր տունն յովսեփու՝ և կերիցէ զնա. և ոչ ոք իցէ, որ շիջուցանիցէ տանդ Իղի։ * 7 Որ առնէ 'ի բարձունս իրաւունս՝ և զարդարութիւն եդ յերկրի։ * 8 Որ առնէ զամ՝ և նորոգէ. և դարձուցանէ յայգ զստուերս մահու. և զտիւ 'ի գիշեր միացուցանէ. ‖ որ կոչէ զջուրս ծովու՝ և հեղու 'ի վր երկրի. Տր ամենակալ անուն է նր։ * 9 Որ բաշխէ զբեկումն 'ի վր զօրութեան. և ածէ զթշուառութիւն 'ի վր ամրոցաց։ * 10 Ատեցին 'ի դրունս զյանդիմանիչս. և զբանս սուրբս պիղծս արարին։ * 11 Վա այնորիկ փոխանակ զի կռփէիք զաղքատն. և կաշառս ընտրանաւ առնուիք 'ի նոցանէն. ‖ ապարանս զարդարեալս շինեսջիք՝ և մի բնակեսջիք 'ի նոսա. այգիս ցանկալիս տնկեսջիք. և զգինի նց մի արբջիք։ * 12 Զի գիտացի ես զբազում ամպարշտութիւնս ձեր. և սաստիկք են մեղք ձեր։ առ ոտն կոխէիք զարդարն առնլով փոխանակս. և խոտորեցուցանէիք զաղքատն 'ի դրունս։ * 13 Վա այնորիկ որ իմաստուն է՝ 'ի ժամանակին յայնմիկ լռեսցէ՝ զի ժամանակն չար է։ * 14 Խնդրեցէք զբարի՝ և մի զչար՝ զի կեցջիք՝ և եղիցի ընդ ձեզ Տր Ած ամենակալ. զոր օրինակ ասացիքն։ * 15 ‖ Ատեցաք զչարիս. և սիրեցաք զբարիս. հաստատեցէք իրաւունս 'ի դրունս ձեր. զի ողորմեսցի Տր Ած մնացորդաց յովսեփայ։ * 16 Վա այդորիկ այսպէս ասէ Տր Ած ամենակալ. յամ հրապարակս կոծ. և յամ ճանապարհս ասասցի վայ՝ վայ. կոչեսցի մշակ 'ի սուգ և 'ի կոծ և 'ի ձայնարկուս։ * 17 Եւ յամ ճանապարհս կոծ. քանզի անցից ընդ մէջ քո՝ ասէ Տր։ * 18 ‖ Վայ, որ ցանկանայ աւուր Տն. զի՞ կայ ձեր և աւուր Տն. և նա խաւար՝ և ոչ լոյս։ * 19 Զոր օրինակ եթէ փախիցէ մարդ յերեսաց առիւծու. և պատահեսցի նմա արջ. և փախնուցու 'ի տուն՝ և յեցուսցէ զձեռս իւր յորմն. և հարկանիցէ զնա օձ։ * 20 Ո՞չ ապաքէն խաւար է օրն Տն՝ և ոչ լոյս. աղջամղջին՝ և ոչ գոյ 'ի նմա ճաճանչ։ * 21 ‖ Ատեցի՝ մերժեցի զտօնս ձեր. և 'ի տարեկանս ձեր ոչ հոտոտեցայց։ * 22 Զի եթէ մատուցանիցէք զողջակէզս՝ և զզոհս ձեր՝ ոչ ընկալայց. և յերևելիս փրկութեան ձեր ոչ հայեցայց։ * 23 'Ի բաց արա յինէն զձայն երգոց քոց. և զնուագ սրնգաց քոց ես ոչ լուայց։ * 24 Եւ յորդեսցին իբրև զջուր իրաւունք. և արդարութիւն իբրև զհեղեղ անհուն։ * 25 ‖ Միթէ սպանդ և զոհս մատուցիք ինձ յանապատի անդ քառասուն ամ տանդ Իղի։ * 26 Եւ առէք զխորանն մոլոքայ՝ և զաստղն Այն ձերոյ զռեմփայ. զպատկերսն նոցա՝ զորս արարիք ձեզ։ * 27 Եւ փոխեցից զձեզ անդր քան զդամասկոս՝ ասէ Տէր. ամենակալ անուն է նորա։

## ԳԼ: Զ:

1 Վայ, ‖ որք անդոսնեն զսիոն՝ և յուսացեալք իցեն 'ի լեառն շամրնի՝ կթէ զիշխանութիւս ազգաց. և մտին 'ի նոսա տունդ Իղի։ * 2 Անցէք ամենեքեան 'ի քաղանէ՝ և տեսէք. և անցէք անտի 'ի մեծն եմաթայ հռաբայ. և իջէք 'ի գէթ այլազգեաց՝ զզօրաւորս քան զքաղաքսն զայնոսիկ. եթէ իցեն մեծ սահմանք նոցա քան զսահմանս ձեր։ * 3 Որք դայքդ յօր չարեաց. որք մերձենայքդ հասանել 'ի շաբաթս սուտեց։ * 4 Որք ննջէքդ 'ի գահոյս փղոսկրեայս. և փափկանայք յանկողինս ձեր. և ուտէք ուլս 'ի հօտից. և որթս դիեցիկս յանդէոց։ * 5 Որք կայթս հարկանէք ընդ

ընդդէմ սրնգաց. զորս իբրև հաստատունս համարեցայք՝ և ոչ անցաւորս: 6 *Որ ըմպէք զպարզեալ գինի. և անոյշ իւղովք օծանիք. և ոչ ցաւէր ձեզ վս̄ բեկմանն յովսեփայ: 7 *Վս̄ այնորիկ արդ 'ի գերութի̄ վարեսցին՝ յիշխանութէ̄ բռնաւորաց. և հատցի խլխնջիւն երիվարաց եփրեմայ: 8 *Զի երդուաւ Տր̄ յանձն իւր. և ասէ Տր̄ Ա̄ծ զօրութեց՝ թէ զարշեցուցից զամ̄ հպարտութիս յակոբայ. և զաշխարհս ն̄ր ատեցից: և բարձից զքաղաքս ն̄ց ամ̄ բնակչօք: 9 *Եւ եղիցի եթէ մնասցեն տասն այր 'ի տան միում. և մեռանիցին: 10 *Եւ մնացորդքն առնուցուն զընտանիս իւրե̄՝ և ջանիցեն հանել զոսկերս նոցա 'ի տանէ անտի. և ասասցեն ցայնոսիկ՝ որք կացցեն առաջի տանն. եթէ այլ ինչ մնայ̄ց այդր առ քեզ: 11 *Եւ նա ասասցէ՝ եթէ ոչ: մի՛ ասասցէ լռեա լեր. վս̄ այնորիկ է՝ զի ոչ անուանեսցին զանուն Տն̄: 12 *Զի ահաւասիկ Տր̄ հրամանս տացէ. և հարցէ զմեծ ապարանսն կործանմամբ. և զփոքր ապարանսն պատառմամբ: 13 *Միթէ արշաւիցեն երիվարք ընդ վէմս. և կամ հանդարտիցին 'ի մէջ մատակաց. զի խոտորեցիք զիրաւունս 'ի ցասումն. և զպտուղ արդարութե̄ 'ի դառնութի̄: 14 *Եւ ուրախ լինէիք յոչ ինչ բանս: այք ասէիք՝ եթէ ոչ զօրութե̄ մերով եղեն մեզ եղջիւրք: 15 *Վս̄ այդորիկ ահա ես յարուցից 'ի վր̄ ձեր տունդ Իղի̄ ասէ Տր̄ Ա̄ծ զօրութեց, ազգ մի՝ որ նեղիցեն զձեզ՝ զի մի՛ ևս մտանիցէք յեմաթ. և մինչև 'ի հեղեղատն արևմտից:

## ԳԼ: Է:

1 Այսպէս եցոյց ինձ Տր̄ Տր̄. և ահա ծնունդ մարախոյ գայր ընդ առաւօտս. և ահա ջորեակ մի գօգ արքայ: 2 *Եւ եղիցի եթէ վախճանեսցէ ուտել զխոտ երկրին: և ասեմ. Տր̄ Տր̄ խնայեա՛. քանզի ո՞վ իցէ՝ որ կանգնիցէ զյակոբ. զի սակաւաւոր է: 3 *Ապաշաւեա՛ց Տր̄ 'ի վր̄ այսորիկ: և այդ մի՛ ևս լիցի՝ ասէ Տր̄: 4 *Այսպէս եցոյց ինձ Տր̄ Տր̄. և ահա կոչեաց զդատաստան հրով Տր̄ Տէր. և եկեր զխորս բազումս՝ և զվիճակն: 5 *Եւ ասեմ Տր̄ Տր̄. դադարեցո՛ զայդ. քանզի ո՞վ է՝ որ յարուցանիցէ զյակոբ. զի սակաւաւոր է: 6 *Ապաշաւեա՛ց Տր̄ 'ի վր̄ այդորիկ. և այդ ևս մի՛ լիցի՝ ասէ Տր̄ Տր̄: 7 *Այսպ̄ եցոյց ինձ Տր̄ Տր̄. և ահա այր մի կայր 'ի վերայ ադամանդեայ պարսպի. և 'ի ձեռին իւրում ադամանդ: 8 *Եւ ասէ ցիս Տր̄. զի՞նչ տեսանես ամովս: և ասեմ, ադամանդ: և ասէ ցիս Տր̄. ահաւասիկ ես հաստատեցից ադամանդ 'ի մէջ ժողովրդեան իմոյ Իղի̄. և ոչ ևս յաւելից անցուցանել զնովաւ: 9 *Եւ ապականեսցին բագինք կատակութե̄ն՝ և մեհեանքն Իղի̄ աւերեսցին: և յարեայց 'ի վր̄ տանն յերոբովամայ սրով: 10 *Եւ առաքեաց ամասիա քուրմ բեթելայ առ յերոբովամ՝ արքայ Իղի̄ և ասէ՝ ժողովս կուտէ 'ի վր̄ քո ամովս 'ի մէջ տանս Իղի̄. և երկիրս ոչ կարէ հանդարտել ամ̄ բանից ն̄ր: 11 *Զի այսպէս ասէ ամովս. յերոբովամ սրով վախճանեսցի. և Իղ̄ գերելով գերեսցի յերկրէ իւրմէ: 12 *Եւ ասէ ամասիա ցամովս. տեսանող՝ տո՛ւր տեղի՝ գնա՛ յերկիրն հրէաստանի՝ և անդ կեա՛ց՝ և անդէն մարգարէասջիր: 13 *Ի բեթէլ մի՛ ևս յաւելուր մարգարէանալ՝ զի սրբութի̄ թագաւորի է՝ և տուն թագաւորութե̄: 14 *Պատասխանի ետ ամովս՝ և ասէ ցամասիա. ես ոչ մարգարէ էի՛ և ոչ որդի մարգարէի. այլ հովի՛ւ էի. և թութ քաղէի: 15 *Եւ էառ զիս Տր̄ 'ի հօտից. և ասէ ցիս Տր̄. գնա՛ դու, և մարգարէա՛ց 'ի վր̄ ժողովրդեան իմում Իղի̄: 16 *Եւ արդ՝ լո՛ւր զպատգամս Տն̄. դու ասես մի՛ մարգարէանար 'ի վերայ Իղի̄. և մի՛ ժողովս ժողովեր 'ի վերայ տանն յակոբայ: 17 *Վս̄ այդորիկ այսպ̄ ասէ Տր̄ Տր̄. կին քո՝ 'ի քաղաքիդ պոռնկեսցի. և ուստերք քո. և դստերք քո 'ի սուր անկցին: և երկիրդ քո լարաբաժին բաժանեսցի. դու յերկրի պղծում վախճանեսցիս: և Իղ̄ գերելով գերեսցի յերկրէ իւրմէ:

## ԳԼ: Ը:

1 Այսպէս եցոյց ինձ Տր̄ Տր̄. և ահա գործի հաւորսաց: 2 *Եւ ասէ՝ զի՞նչ տեսանես ամովս. և ասեմ՝ գործի հաւորսաց: և ասէ ցիս Տր̄՝ հասեալ է վախճան 'ի վր̄ ժողովրդեան իմոյ Իղի̄. և ոչ ևս յաւելից անցուցանել զնովաւ: 3 *Եւ ողբասցեն յարկք տաճարին յաւուր յայնմիկ՝ ասէ Տր̄. բազումք անկանիցին. և յամ̄ տեղիս արկից զլռութի̄: 4 *Լուարո՛ւք զայս՝ որք նեղէիք զտնանկն ընդ առաւօտս. և զըրկէիք զաղքատ յերեկորեայ: 5 *Եւ ասէիք՝ երբ անցցէ ամիս, և շահիցուք. և շաբաթ, և բացցուք զգանձս. և առնել զչափ փոքր՝ և մեծացուցանել զկշիռս. և առնել կշիռս սուտս: 6 *Ստանալ արծաթով զաղքատս. և զտնանկն 'ի գնոց կօշկաց. և յամ̄ վաճառս մեր շահիցուք: 7 *Երդնու Տր̄ 'ի վր̄ հպարտութե̄ն յակոբու. թէ ոչ մոռասցին իս_

պատ ամ գործք ձեր ։ * Եւ ՚ի վր այ_ 8
դորիկ խռովեսցի երկիր. սուգ առցեն
ամ բնակիչք նր. և ելցէ իբրև գետ
վախճան նորա. և իջցէ իբրև գետն
եգիպտացւոց ։ * Եւ եղիցի յաւուր 9
յայնմիկ ասէ Տր Տր՝ մտցէ արեգակն
՚ի միջօրէի. և խաւարեսցի յերկրէ լոյս
՚ի տուէ ։ * ‖ Եւ դարձուցից ՚ի սուգ 10
զտօնս ձեր. և զամ՝ երգս ձեր յողբս.
և ածից ՚ի վր ամ հասակաց զքուրձ.
և ՚ի վր ամ գլխոց կնտութի. և արա_
րից նմա իբրև սուգ սիրելւոյ. և որոց
ը̃ նմայն իցեն՝ իբրև օր ցաւոց ։ * Ահա 11
աւուրք գան ասէ Տր Տր. և առաքեցից
զսով յերկիր. ոչ սով հացի. և ոչ ծա_
րաւ ջրոյ. այլ սով լսելոյ զբանն Տն ։
* Եւ խռովեսցին ջուրք ՚ի ծովէ մին_ 12
չև ՚ի ծով՝ և ՚ի հիւսիսոյ մինչև յարև_
ելս. ընթասցին խնդրել զբանն Տն.
և մի գտցեն ։ * Յաւուր յայնմիկ նե_ 13
ղեսցին կոյսք գեղեցիկք և երիտա_
սարդք ՚ի ծարաւոյ ։ * Որք երդնուին 14
՚ի քաւութիւս շամրնի. և ասեն՝ կեն_
դանի է աստուած քո դան՝ և կենդա_
նի է ած քո բերսաբէէ. և կործանես
ցին. և մի ևս կանգնեսցին ։

‖ Տոբ. 2. 6. 1. Մակ. 1. 41.

սամարիոյ

## ԳԼ ։ Թ.

Տեսի զՏր՝ զի կայր ՚ի վր սեղանոյ՝ 1
և ասէ ։ բաղխեա՛ զսեղանդ՝ և շար
ժեսցին դրանդիք. և կտրեա՛ յարկ ՚ի
գլուխս ամենեցուն. և զմնացորդս նց
սրով կոտորեցից. և մի ապրեսցի ՚ի նո
ցանէ փախուցեալն. և մի՛ զերծցի ՚ի
նոցանէ զերծեալն ։ * ‖ Զի եթէ ծած 2
կեսցին ՚ի դժոխս, անտի ձեռն իմ կոր
զեսցէ զնս. և եթէ ելանիցեն յերկինս՝
և անտի իջուցից զնս. և եթէ թաքի_
ցին ՚ի բարձունս կարմեղայ, և անտի
յուզեցից, և առից զնոսա ։ * Եւ եթէ 3
ընկեսցին յաչաց իմոց ՚ի խորս ծովու,
և անդ հրամայեցից վիշապին խայթել
զնոսա ։ * Եւ եթէ գնասցեն ՚ի գերու 4
թի առաջի թշնամեաց իւրեանց, և
անդ հրամանս տաց սրոյ՝ և սատակես_
ցէ զնս ։ ‖ և հաստատեցից ՚ի վր նոցա
զաչս իմ ՚ի չարութի և ոչ ՚ի բարութի ։
5 * Եւ Տր Ած ամենակալ՝ որ մերձենայ
յերկիր՝ և շարժէ զնա. և սուգ առցեն
ամ բնակիչք նր. և ելցէ իբրև գետ
վախճան նորա. և ելցէ իբրև գետն
6 եգիպտացւոց ։ * Որ շինէ յերկինս ըղ
համբառնալ իւր՝ և զաւետիս իւր յերկ
րի հաստատէ. ‖ որ կոչէ զջուրս ծո_
վու՝ և հեղու զնա ՚ի վերայ երեսաց
երկրի. Տր ամենակալ անուն է նորա ։
7 * Ոչ ապաքէն իբրև զորդիս եթեովպա
ցւոց էք դուք ինձ, որդիք իէլի՝ ասէ
Տր. ոչ զիէլ հանի յերկրէ եգիպտաց
ւոց՝ և զայլազգիս ՚ի գամրայ՝ և զասո_
8 րիս ՚ի բոթորայ ։ * Ահաւասիկ աչք Տն
՚ի վր թագաւորութեդ մեղաւորաց.
և բարձից զդա յերեսաց երկրի ։ սա_
կայն իսպառ ոչ ջնջեցից զտունն յա_
9 կոբու՝ ասէ Տր ։ * Զի ահաւասիկ ես
հրաման տամ. և ցրուեցից զձեզ ընդ
ամ ազգս զտունդ իէլի՝ զոր օրինակ հո
սի հոսչաւ. և մի անկցի մանրուած նր
10 յերկիր ։ * Սրով վախճանեսցին ամ
մեղաւորք ժողովրդեան իմոյ. որք ա_
սեն՝ ոչ մերձեսցին՝ և հասցեն ՚ի վր
11 մեր չարիք ։ * ‖ Յաւուր յայնմիկ կանգ
նեցից զխորանն դաւթի զանկեալն. և
կանգնեցից զկործանեալս նորա. և
զյատակեալս նորա վերստին կանգնե
ցից. և շինեցից զնա ըստ աւուրցն յա_
12 ւիտենից ։ * Որպէս զի խնդրեսցեն զիս
մնացորդք մարդկան. և ամ ազգք յո_
րոց վերայ կոչեցեալ է անուն իմ ։ ասէ
13 Տէր՝ որ առնէ զայս ։ * Ահա աւուրք
գան ասէ Տր՝ և հասցեն կալք կթոց.
և խայծեսցի խաղող ՚ի հարաւունս ‖ և
բղխեսցեն լերինք զքաղցրութի. և
ամ բլուրք անտառախիտք եղիցին ։
14 * Եւ դարձուցից զգերութի ժողովր
դեան իմոյ իէլի. և շինեսցեն զքաղաքս
ապականեալս, և բնակեսցին. և տնկես
ցեն այգիս, և արբցեն զգինի նց. արա
ցեն պարտէզս, և կերիցեն զպտուղ նց ։
15 * Եւ տնկեցից զնս յերկրի իւրեանց.
և մի ևս մերժեսցին յերկրէ իւրեանց
զոր ետու ես նց՝ ասէ Տր Ած ամենակալ ։

բաղխեա՛ զծխնելիդ՝ և շար_ ժեսցին դրան_ դէքդ. զի ափահա րեան ՚ի գլուխս ամենե_ ցուն

‖ Սաղ. 138. 8.

‖ Երեմ. 44. 11.

‖ Ամ. 5. 8.

‖ Գործ. 15. 16.

‖ Յովէլ. 3. 18.

## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱԲԴԻՈՒ ։

Տեսիլ Աբդիու, որ եղև յառաջին զերու 1
[illegible] ։

ԱՅՍՊԷՍ ԱՍԷ ՏՐ
յեդոմ. լուր լուաւ ՚ի
Տէ. և պաշարումն ա_
ռաքեաց ՚ի հեթանոսս ։
արիք, և յարիցուք ՚ի վր
նոցա ՚ի պատերազմ ։
* Ահա՝ սակաւաւոր ետու զքեզ յազգս. 2
3 և անարգեալ ես դու յոյժ ։ * Ամպար_
տաւթի սրտի քո բարձրացոյց զքեզ
բնակել ՚ի ծակս վիմաց. բարձրա_
ցուցանել զբնակութիւն իւրաքանչ ՚ի
սրտի իւրում, ո՞վ իջուսցէ զիս յեր_
4 կիր ։ * Եթէ բարձրասցիս իբրև զար
ծուի՝ և եթէ ՚ի մէջ աստեղաց դի_
ցես զբոյն քո, և անտի իջուցից զքեզ
5 ասէ Տր ։ * Եթէ գողք մտեալ էր առ
քեզ՝

‖ Երեմ. 49. 14.

քեզ՝ կամ աւազակաց գիշերոյ՝ ուր և էր ղուղէիր. և ոչ արդեօք գողանային բաւական իւրեանց. և եթէ կթօղք մտեալ էին ՚ի քեզ. և ոչ եթէ ձիւ մի ոչ թողուին։ 6 * Ո՜հարդ քննեցաւ եսաւ՝ և ըմբռնեցան ծածուկք նորա։

7 * Մինչև ՚ի սահմանս առաքեցին ըզ քեզ. ամ արք ուխտի քոյ դարձան ընդ դէմ քո. զօրացան ՚ի վր քո արք խաղաղութե քոյ. վարանեցին զքեզ՝ ոչ գոյր իմաստութի ՚ի նմա։ 8 *|| Յաւուր յայն միկ, ասէ Տր՝ կորուսից զիմաստութի յերկրէն եդոմայ. և զհանճար ՚ի լեռնէն եսաւայ։ 9 * Եւ սարսեսցին պատերազմօղք քո՝ որք ՚ի թեմանայ. զի բարձցի մարդ ՚ի լեռնէն եսաւայ։

|| Երեմ. 29.14.

10 *|| Վն սպանման և ամպարշտութեան եղբօր քոյ յակոբայ՝ ծածկեսցէ զքեզ ամօթ, և ջնջեսցիս յաւիտեան։

|| Ծննդ. 27. 42.

11 * Յօրէ յորմէ կայեր հակառակ՝ յաւուրն գերելոյ այլազգեաց զզօրութի նր. և օտարք մտին ընդ դրունս նորա. և ՚ի վր երէմի վիճակս արկանէին. և դուք էիք իբրև զմի ՚ի նոցանէն։

12 * Եւ մի տեսցես զաւուր եղբօրն քոյ յաւուրն օտարաց. և մի ոտնհար լիցիս որդւոցն յուդայ յաւուրս կորստեան նց. և մի մեծաբանեսցես յաւուր նեղութե։ 13 * Եւ մի մտանիցես ը դրունս ժողովրդոց յաւուր աւուրց նց. և մի տեսցես զժողովս նոցա յաւուր սատակման նց. և մի ՚ի վր հարկանիցիս զօրութե նց յաւուր կորստեան նոցա։

14 * Եւ մի առնուցուս զկիրճս նոցա սատակել զապրեալս ՚ի նոցանէն. և մի պաշարեսցես զփախստեայս նց յաւուր նեղութե։ 15 * Զի մերձ է օր Տն ՚ի վր ամ ազգաց. զոր օրինակ արարեր դու՝ եղիցի քեզ. և հատուցումն քո հատուցի ՚ի գլուխ քո։ 16 * Զի զոր օրինակ արբեր ՚ի վերայ լերին սրբութե իմոյ. արբցեն ամ ազգք զգինի. արբցեն, և զիջցեն, և եղիցին իբրև չեղեալք։

17 * Բայց ՚ի լեառն սիոն եղիցի փրկութի և եղիցի սուրբ. և ժառանգեսցէ տունն յակոբու զժառանգիչս իւր։

18 * Եւ եղիցի տունն յակոբու հուր. և տունն յովսէփու բոց. և տունն եսաւայ եղէգն. վառեսցին զնոսա, և կերիցեն զնոսա. և մի մնասցէ կրակաբեր տանն եսաւայ՝ զի Տր խօսեցաւ։ 19 * Եւ ժառանգեսցեն նագեբացիք զլեառնն եսաւայ. և սեփեղայիք զայլազգիս. և ժառանգեսցեն զլեառնն եփրեմայ. և զբենիամին՝ զգաղաադացիս։ 20 * Եւ գերութե սկիզբն այն իցէ որդւոցն իէլի։ երկիր քանանացւոց մինչև ՚ի սարփաթ. և գերութին երէմի մինչև յեփրաթայ. և ժառանգեսցեն զքաղաքս նագեբայ։

եւ բենիամին սարեփթայ

21 * Եւ ելցեն ապրեալք ՚ի լեռնէն սիոնի՝ առնուլ զվրէժ ՚ի լեռնէն եսաւայ. և եղիցի Տն արքայութի։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՅՕՆԱՆՈՒ։

## Գլուխ Առաջնոյ։

1 ԵՒ ԵՂԵՒ ԲԱՆ Տն առ յօնան որդի ամաթեայ՝ և ասէ։ 2 * Արի, և գնա՛ ՚ի նինուէ քաղաք մեծ. և քարոզեսջիր անդ. զի ել աղաղակ չարութե նորա առ իս։ 3 * Եւ յարեաւ յօնան փախչել ՚ի թարսիս յերեսաց Տն. էջ ՚ի յոպպէ՝ և եգիտ նաւ որ երթայր ՚ի թարսիս. ետ զգինս՝ և եմուտ ՚ի նա՝ նաւել ընդ նոսա ՚ի թարշիշ յերեսաց Տն։ 4 * Եւ Տր յարոյց ըզ հողմ ՚ի ծովուն. և նաւն ՚ի վտանգի կայր ՚ի խորտակիլ։ 5 * Եւ երկեան նաւավարքն յերկիւղ մեծ. և աղաղակէին առ իւրաքանչիւր աստուածս իւրեանց. և ընկեցին զկարասին ՚ի ծով անդր՝ զի թեթևասցուսցեն յինքեանց. և յօնան իջեալ ՚ի խորշ մի նաւին՝ ննջէր, և խորդայր։ 6 * Մատեաւ առ նա նաւապետն՝ և ասէ. զի՞նչ է այդ՝ զի խորդաս. արի՛, կարդա՛ զՏր Ած քո. թերևս ապրեցուսցէ զմեզ Ած՝ և մի՛ կորիցուք։

7 * Եւ ասեն իւրաքանչիւր ցընկեր իւր. եկա՛յք, արկցուք վիճակս՝ և տեսցուք. վո՞յր են չարիքս այս ՚ի վր մեր. արկին վիճակս՝ և ել վիճակն յօնանու։ 8 * Եւ ասեն ցնա. պատմեա՛ մեզ. վասն է՞ր են չարիքս այս մեծ. ուստի՛ գաս՝ կամ յո՛ երթաս. յորմէ՛ աշխարհէ ես՝ կամ յորմէ՛ ժողովրդենէ։ 9 * Ասէ ցնոսա. ծառայ Տն եմ ես՝ և զՏր Ած երկնից պաշտեմ. որ արար զծով և զցամաք։ 10 * Եւ երկեան արքն յերկիւղ մեծ. և ասեն ցնա. զի՞նչ գործեցեր զայդ (զի գիտացին եթէ յերեսաց Տն փախուցեալ էր. քանզի պատմեաց նց։) 11 * Եւ ասեն ցնա. զի՞նչ արասցուք քեզ՝ և դադարեսցէ ծովս ՚ի մէնջ. զի ծովն առաւել ևս խռովէր՝ և յարուցանէր զմրրիկ ՚ի վր նց։ 12 * Եւ ասէ ցնոսա յօնան. առէ՛ք՝ ընկեցէ՛ք

զնա 'ի ծովդ՝ և դադարեսցէ 'ի ձէնջ ծովդ. գիտեմ ես եթէ վ՟ն իմ է մրրիկս այս մեծ 'ի վ՟ր ձեր: 13 *Եւ ջանային արքն դարձուցանել զնաւն 'ի ցամաք՝ և ոչ կարէին. զի ծովն ևս քանզևս խռովէր. և սաստկանայր 'ի վ՟ր ն՟ց: 14 *Աղաղակեցին առ Տ՟ր՝ և ասեն. քաւ լիցի Տ՟ր. մի կորիցուք վ՟ն անձին առնս այսորիկ. և մի ածեր 'ի վ՟ր մեր արիւն արդար. զի դու Տէր ո՟րպ կամեցար՝ և արարեր: 15 *Եւ առին զյոնան՝ և ընկեցին 'ի ծովն. և դադարեաց ծովն 'ի խռովութէ իւրմէ: 16 *Եւ երկեան արքն յերկիւղ մեծ 'ի Տ՟է. զենին զոհս Տ՟ն և ուխտեցին ուխտս:

## Գլ. Բ:

1 Եւ հրաման ետ Տէր կիտին մեծի կլանել զյոնան. ‖ և էր յոնան 'ի փոր կիտին զերիս տիւս և զերիս գիշերս: 2 *Եւ եկաց յոնան յաղօթս առ Տ՟ր Ա՟ծ 'ի փորոյ կիտին: 3 *Եւ ասէ՝ ‖ 'ի նեղութե իմում աղաղակեցի առ Տ՟ր Ա՟ծ իմ. և լուաւ ինձ յորովայնէ դժոխոց աղաղակի իմում. լուր Տ՟ր ձայնի իմում: 4 *Եւ ընկեցեր զիս 'ի խորս սրտից ծովու. և գետք պաշարեցին զիս. ա՟մ զբօսանք քո՝ և ալիք քո անցին 'ի վ՟ր իմ: 5 *Եւ ասացի՝ թէ մերժեցայ յաչաց քոց. արդ՝ իցէ թէ յաւելից հայել 'ի տաճար ս՟ր քո: 6 *‖ Հեղան զինև ջուրք մինչև յոգիս՝ անդունդք անհուն նորինք պաշարեցին զիս: եմուտ գլուխ իմ 7 *ընդ փապարս լերանց: իջի յերկիր՝ որո՟յ նիգք իւր ախք յաւիտենից. ելցեն յապականութէ կեանք իմ: 8 *Առ քեզ Տ՟ր Ա՟ծ 'ի նուաղել հոգւոյ իմոյ կարդացի. զՏ՟ր յիշեցի. և եկեսցեն աղօթք իմ 'ի տաճար ս՟ր քո: 9 *Որք պահեն զունայնութի և զսուտ զողորմութի իւրեանց թողին: 10 *Այլ ես 'ի ձայն օրհնութե և խոստովանութե մատուցից քեզ պատարագ՝ զոր ուխտեցի, և հատուցից փրկութե Տ՟ն: 11 *Եւ հրամայեցաւ 'ի Տ՟է վիշապ ձկանն՝ և եթուք զնա 'ի ցամաք:

‖ Մատթ. 12. 40. և 16. 4. Ղուկ. 11. 30.
‖ 1. Կորն. 15. 4. Սաղմ. 119. 1.
‖ Սաղմ. 68. 1.

## Գլ. Գ:

1 Եւ եղև բան Տ՟ն առ յոնան երկրորդ անգամ, և ասէ: 2 *Արի, և գնա 'ի նինուէ քաղաք մեծ. և քարոզեսջիր 'ի նմա ըստ առաջնոյ քարոզութեն. զոր խօսեցայ առ քեզ: 3 *Յարեաւ յոնան՝ և գնաց 'ի նինուէ. ո՟րպ խօսեցաւ ընդ նմա Տ՟ր. և նինուէ էր քաղաք մեծ Ա՟յ, իբրև գնաց երից աւուրց ճանապարհ: 4 *Եւ սկսաւ յոնան մտանել 'ի քաղաքն իբրև աւուր միոյ ճանապարհի. քարոզեաց՝ և ասէ. տակաւ երեք աւուրք՝ և նինուէ կործանեսցի: 5 *‖ Եւ հաւատացին արքն նինուէացիք յԱ՟ծ՝ և քարոզեցին պահս՝ և զգեցան քուրձ 'ի մեծամեծաց մինչև ցփոքունս իւրեանց: 6 *Եհաս բանն առ թագաւորն նինուէացւոց. յարեաւ յաթոռոյ իւրմէ՝ և մերկացաւ զպատմուճան իւր: զգեցաւ քուրձ՝ և նստաւ 'ի վերայ մոխրոյ: 7 *Եւ քարոզեցաւ՝ և պատմեցաւ 'ի նինուէ 'ի թագաւորէն և 'ի մեծամեծաց իւրոց. թէ մարդ՝ և անասուն՝ խաշն՝ և արջառ. մի ինչ ճաշակեսցեն՝ և մի ճարակեսցեն. և մի ջուր արբցեն: 8 *Եւ զգեցան քուրձ մարդ՝ և անասուն. և աղաղակեցին առ Ա՟ծ սրտի մտօք. և դարձան իւրաքանչիւր 'ի ճանապարհաց իւրեանց չարաց: և յանիրաւութէ՝ որ 'ի ձեռս իւրեանց: 9 *‖ Եւ ասեն՝ ո՞ գիտէ՝ ապաշաւեսցէ Ա՟ծ և դարձցի 'ի բարկութէ սրտմտութե իւրոյ, և մի կորիցուք: 10 *Եւ ետես Ա՟ծ զգործս ն՟ց. զի դարձան իւրաքանչիւր 'ի ճանապարհաց իւրեանց չարաց. և զղջացաւ Ա՟ծ 'ի վերայ չարեացն՝ զոր խօսեցաւ առնել ն՟ց՝ և ոչ արար:

գնացս էր երից աւուրց ճանապարհի

‖ Մատթ. 12. 41. Ղուկ. 11. 32.
‖ Երեմ. 18. 11. Յովէլ 2. 14.

## Գլ. Դ:

1 Եւ տրտմեցաւ յոնան տրտմութի մեծ՝ և խռովեցաւ: 2 *Եւ եկաց յաղօթս առ Տ՟ր Ա՟ծ՝ և ասէ. ո՞վ Տ՟ր ո՞չ այս այն են բանք իմ. մինչ էի անդէն յերկրին իմում. վ՟ն այնորիկ աճապարեցի փախչել 'ի թարշիշ. ‖ զի գիտէի՝ թէ ողորմած ես դու՝ և գթած. երկայնամիտ՝ և բազումողորմ. և զղջանաս 'ի վ՟ր չարեաց: 3 *Եւ արդ Տ՟ր Տ՟ր առ զոգի իմ յինէն. զի լաւ է ինձ մեռանել քան թէ իցեմ կենդանի: 4 *Եւ ասէ Տ՟ր ցյոնան՝ թէ արդարև յո՞յժ տրտմեալ իցես: 5 *Եւ ել յոնան 'ի քաղաքէ անտի՝ և նստաւ յանդիման քաղաքին. և արար իւր հովանի՝ և նստաւ ընդ հովանեաւն. մինչև տեսանիցէ, թէ զինչ լինիցի 'ի քաղաքին: 6 *Եւ հրաման ետ Տ՟ր Ա՟ծ դդմենւոյն. և ել 'ի վ՟ր գլխոյն յովնանու՝ լինել հովանի 'ի վ՟ր գլխոյ ն՟ր. զովացուցանել զնա 'ի տառապանաց իւրոց: և ուրախ եղև յոնան 'ի վերայ դդմենւոյն յուրախութի մեծ: 7 *Եւ հրաման ետ Ա՟ծ որդանն առաւօտու 'ի վաղիւն անդր: եհար զդդմենին՝ և ցամաքեցաւ: 8 *Եւ եղև 'ի ծագել արեւուն. հրամայեաց Ա՟ծ հողմոյ խորշակի տապախառնի. և անկաւ արև զգլխովն յովնանու. և կայր 'ի տարակուսի՝ և քաղեին ոգիք ն՟ր. և ասէր՝ լաւ էր ինձ մեռանել քան զայս կեանս իմ: *Եւ

‖ Սաղմ. 85. 15. Յովէլ 2. 13.

* Եւ ասէ Տր Այ ցյոնան. թէ արդարև յոյժ տրտմեալ իցես 'ի վերայ դդմենւոյն. և ասէ՝ յոյժ տրտմեալ եմ մինչև ց մահ: 9 * Եւ ասէ Տր՝ դու խնայեր 'ի դդմենին՝ յոր չեղեր ինչ աշխատ. և ոչ սնուցեր զնա. 'ի գիշերի 10 եղ՝ և 'ի միւս գիշերի կորեաւ: 11 * Եւ ես ոչ խնայեցից 'ի նինուէ քաղաք մեծ. յորում բնակեալ քեն աւելի քան զերկոտասան բիւր մարդիկք. որք ոչ ճանաչեն զաջ և զահեակ իւրեանց. և անասուն բազում:

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՄԻՔԻԱՅ:

Գլուխ Առաջնորդ:

1 Եւ եղև բան Տն առ Միքիէ մորասթացի յաւուրս յովաթամայ՝ և աքազու՝ և եզեկիայ՝ թագաւորաց յուդայ. զոր ետես 'ի վերայ շամրնի և 'ի վերայ եէմ.



Եսայ. 1. 2. 2. Օրէ. 32. 1.

ԼՈՒԱՐՈՒՔ 2 ԺՈՂՈՎՈՒՐԴՔ ամ. և ունկն դիցէ երկիր՝ և ամ բնակիչք նր. և եղիցի Տր Այ 'ի միջի ձեր 'ի վկայութի. Տր 'ի տանէ սրբոյ իւրմէ: 3 * Զի ահա աւասիկ խաղասցէ 'ի տեղւոջէ իւրմէ. իջցէ՝ և հասցէ 'ի վր բարձանց երկրի: 4 * Եւ շարժեսցին լերինք 'ի ներքոյ նր. և ձորք հալեսցին իբրև զմոմ առաջի հրոյ. և իբրև զջուր հոսեալ ընդ զառիվայր: 5 * Վս ամպարշտութեն յակոբու է այն ամ. և վս մեղաց տանն իլի. իսկ արդ՝ ո՞վ է ամպարշտութի յակոբայ. եթէ ոչ շամրին. և ո՞վ է մեղք տանն յուդայ՝ եթէ ոչ եէմ: 6 * Եւ եդից զշամրին իբրև զտաղաւար մրգապահաց ագարակի. և 'ի տունկ այգւոյ: և կործանեցից 'ի խորխորատ զվէմս նր: և զհիմունս նր մերկացից: 7 * Եւ զամ դրօշեալս նր կոտորեսցեն. և զամ զվարձս նր այրեսցեն հրով. և զամ կուռս նր արարից յապականութի. զի 'ի կապենաց պոռնկութե ժողովեաց. և 'ի կապենաց պոռնկութե ամփոփեաց: 8 * Վս այնորիկ կոծեսցի՝ և ողբասցէ. և գնասցէ մերկ՝ և բոկ. և արասցէ կոծ իբրև զվիշապաց. և զսուգ իբրև զդստերաց համբարուաց: 9 * Զի սաստկացան հարուածք նր. քանզի հասին մինչև 'ի յուդայ. և մերձեցան մինչև 'ի դրունս ժողովրդեան իմոյ յեէմ: 10 * Որք 'ի գէթ էք՝ մի մեծաբանէք. և որք յակկարիմ էք՝ մի նորոգէք 'ի տանէ ծիծաղու. հող 'ի գլուխ լերուք 'ի վր կատակութեց ձերոց: 11 * Բնակեալն բարութբ ոչ ել 'ի քաղաքաց իւրոց: բնակիչք սենարայ կոծ առէք 'ի վերայ տանն. որ մերձ է առ նա՝ բարձցէ 'ի ձէնջ զհարուածս ցաւոց: 12 * Ո՞վ արար սկիզբն բարեաց բնակելոյն 'ի մէջ ցաւոց. զի իջին չարիք 'ի Տէ 'ի վր դրանցն եէմի: 13 * Շաչիւն կառաց. և դղրդիւն երիվարաց. բնակիչ՝ ղաքիսայ նա է առաջնորդ մեղաց դստեր սիոնի. զի 'ի քեզ գտան ամպարշտութիք իլի: 14 * Վս այնորիկ տացէ արձակեալս մինչև 'ի ժառանգութիւն գեթայ: զտունս սնոտիս. ինանիր եղեն թագաւորացն իլի: 15 * Մինչև 'ի ժառանգիչսն քո ածցեն բնակիչք ղաքիսայ ժառանգութբ. մինչև 'ի յոդողամ հասցէ փառք դստեր սիոնի: 16 * Գերծ իր՝ և կտրեա՛ 'ի վր փափուկ որդւոցն քոց: լայնեա՛ զկնգուտս քո իբր զարծուոյ՝ զի գերեցան 'ի քէն:

## ԳԼ: Բ.

1 Եղեն խորհիլ զվաստակս՝ և գործեն զչարիս յանկողինս իւրեանց. և ընդ այգն ընդ լոյսն զնոյնն կատարեին. զի ոչ ամբարձին զձեռս իւրս 2 առ Այ: * Ցանկային անդոյ. և յափշտակէին զորբս. և զտունս բռնադատէին: յափշտակէին զայր, և զտուն նորա, զայր՝ և զժառանգութի նր: 3 * Վս այսորիկ այսպէս ասէ Տր. ահաւասիկ ես խորհիմ 'ի վր ազգիդ այդորիկ չարիս՝ ուստի ոչ համբառնայցէք զպարանոցս ձեր. և ոչ գնայցէք կան- 4 գուն՝ զի ժամանակն չար է: * Յաւուր յայնմիկ առից 'ի վր ձեր առակ. ողբասցեն ողբս ձայնիւ՝ և ասասցեն. թշուառութբ թշուառացաք: մասն ժողովրդեան իմոյ լարով չափեցաւ. և ոչ ոք էր՝ որ արգելոյր զնա դարձուցա- 5 նել: անդք մեր բաժանեցան: * Վս այնորիկ ոչ ոք իցէ՝ որ արկանիցէ լարաբաժին վիճակ՝ յեկեղեցւոջ Տն: 6 * Մի լայք արտասուօքք. և մի արտասուեսցեն 'ի վր

'ի վր այդորիկ. զի ոչ մերժեսցէ զնախատինս: *Որ ասացն՝ եթէ տունն Իէլի բարկացոյց զոգի Տն. եթէ այսք գնացք նորա իցեն, ո՞չ են բարւոք բանք նր ը նմա, և ոչ ուղիղ գնացեալ է առաջի իմ: ժողովուրդ իմ: *Ի թշնամութիւն հակառակեցաւ ընդդէմ խաղաղութեան իւրոյ. զմորթ նր մորթեսցեն բառնալ զյոյս՝ զբեկումն պատերազմի: *Վն այնորիկ առաջնորդք ժողովրդեան իմոյ անկցին 'ի տանց փափկութեանց իւրեանց: վն չարութեան գնացից իւրեանց մերժեսցին. մերձեցարո՛ւք 'ի լերինս յաւիտենից: *Յոտն կաց, և գնա՛. զի ո՛չ գոյ քեզ այդր հանգիստ. վն պղծութեան ապականեցայք ապականութբ: *Հալածեցայք առանց ուրուք հալածելոյ. այս սուտ յարեաւ. կաթեցաւ 'ի քեզ գինի՝ և արբեցութի. և եղիցի 'ի կաթոցածոյ անտի ժողովրդեանս այսմիկ: *Ժողովելով ժողովեսցի յակոբ ամենեքումբք հանդերձ: և ընդունելով ընկալցի զմնացորդս Իէլի. և 'ի միասին արարից զդարձ նց. իբրև ոչխարք 'ի նեղութեան. իբրև հօտք 'ի մէջ մակաղատեղի իւրեանց. վարեսցին 'ի մարդկանէ ը խրամ: *Ելի առաջի երեսաց նց խրամատեսցին: և անցցեն ը դուռն. և ելցեն ընդ նա. ել և թագաւորն առաջի երեսաց նց. և Տր առաջնորդեսցէ նց:

## ԳԼ: Գ:

Եւ ասասցէ՝ լուարո՛ւք իշխանք տանն յակոբայ. և մնացորդք տանն Իէլի. ո՞չ ձեր է գիտել զիրաւունս: *Որք ատեայք զբարիս՝ և խնդրէք զչարիս. զերծանէք զմորթ նոցա 'ի նոցանէն: *Որպէս ուտեին զմարմինս ժողովրդեան իմոյ. և զմորթն նց մորթեցին 'ի նոցանէն. և զոսկերս նց փշրեցին: և յօշեցին զմարմինս նոցա իբրև 'ի կաթսայս. և զմիս նոցա իբրև 'ի պուտունս: *Այնպէս աղաղակեսցեն առ Տր՝ և ո՛չ լուիցէ նոցա: և դարձուսցէ զերեսս իւր 'ի նոցանէն 'ի ժամանակին յայնմիկ՝ փոխանակ զի չարչարեցին զնոսա 'ի գործս իւրեանց: *Այսպէս ասէ Տր 'ի վր մարգարէիցն՝ որք մոլորեցուցանեն զժողովուրդ իմ. որք խածանեն ատամամբք իւրեանց՝ և քարոզեն նմա զխաղաղութի, և ո՛չ տուաւ 'ի բերան նոցա. յարուցին 'ի վր նոցա զպատերազմ: *Վն այնորիկ գիշեր լիցի ձեզ 'ի տեսլենէ. և նսեմասցի ձեզ յըղձութէ՝ և մտցէ արեգակն 'ի վր մարգարէիցն. և խաւարեսցի 'ի վր նոցա տիւ: *Եւ ամաչեսցեն երազատեսքն. և ծաղր կայցեն իղձքն. և բամբասեսցեն զնա ամենեքեան. զի ո՛չ ոք իցէ՝ որ լուիցէ նց: *Բայց ես լցայց հոգւոյ զօրութը Տն՝ դատաստանաւ՝ և զօրութը. պատմել յակոբայ զամպարշտութիս նր՝ և Իէլի զմեղս նորա: *Լուարո՛ւք զայս առաջնորդք տանն յակոբայ՝ և մնացորդք տանն Իէլի. որք անարգէք զիրաւունս. և թիւրէք զամ ուղղորդս: *Որք շինէք զսիոն արեամբք. և զէմ անիրաւութբք: *Առաջնորդք նր կաշառօք դատէին. և քահանայք նորա վարձուք տային պատասխանի. և մարգարէք նր արծաթով պատմէին զըղձութի. 'ի Տր ապաստան լինէին, և ասէին. ո՞չ ապաքէն Տր ընդ մեզ է՝ և ո՛չ եկեսցէ 'ի վր մեր չարիք: *Վասն այդորիկ 'ի ձեր սակս սիոն արօրադիր լիցի. և էէմ իբրև զտաղաւար մրգապահաց. և լեառն տաճարին յանտառ մայրոյ:

## ԳԼ: Դ:

Եւ եղիցի յաւուրս յետինս յայտնի լեառն Տն. պատրաստեալ 'ի գլուխս լերանց. և բարձրասցի 'ի վր բլրոց. և փութասցին 'ի նա ժողովուրդք բազումք: *Եւ երթիցեն ազգք բազումք, և ասիցեն. եկա՛յք, և ելցուք 'ի լեառն Տն և 'ի տուն Այ յակոբայ. և ցուցցեն մեզ զճանապարհս նորա՝ և գնասցուք 'ի շաւիղս նորա. զի 'ի սիոնէ ելցեն օրէնք. և բան Տն յէէմէ: *Եւ դատեսցէ 'ի մէջ ժողովրդոց բազմաց. և յանդիմանեսցէ զազգս հզօրս մինչև ցհեռաւորս. և կոտորեսցեն զսուսերս իւրեանց 'ի խոփս. և զգեղարդունս իւրեանց 'ի մանգաղս. և ո՛չ ևս առցէ ազգ յազգի վերայ սուր. և ո՛չ ևս ուսանիցին պատերազմել: *Եւ հանգիցէ իւրաքանչիւրոք ընդ որթով իւրով՝ և ը թզենեաւ իւրով՝ և ո՛չ ոք իցէ որ զարհուրեցուցանիցէ. զի բերան Տն ամենակալի խօսեցաւ զայս: *Եթէ ամ ժողովուրդք գնասցեն իւրաքանչիւր 'ի ճանապարհս իւրեանց. այլ մեք գնասցուք յանուն Տն Այ մերոյ՝ յաւիտեանս և առ յապայ: *Յաւուր յայնմիկ ասէ Տր՝ ժողովեցից զմնրեալն, և զհեռացեալն ընկալայց՝ և զորս մերժեցի: *Եւ արարից զբեկեալն 'ի զաւակ. և զմնացեալն յազգ հզօր. և թագաւորեսցէ Տր 'ի վր նց 'ի լերինն սիոնի յայսմհետէ մինչև յաւիտեանս: *Եւ դու աշտարակ հօտի մթին դուստր սիոնի, 'ի վր քո եկեսցէ՝ և մտցէ առաջին իշխանութի թագաւորութեան դստեր էէմի: *Եւ արդ՝ ընդէ՞ր ծանեար զչար. մի թէ թագաւոր ո՞չ գոյր քո. կամ թէ խորհուրդն քո կորեաւ. զի սաստկացան

ցան երկունք քո իբրև ծննդականի։
10 *Երկնեա՛, և զօրացի՛ր, և մերձեա՛ց դուստր սիօնի իբրև զծննդական. զի այժմ ելցես 'ի քաղաքէ, և բնակեսցուցից զքեզ 'ի դաշտի. և հասցես մինչև 'ի բաբիլոն. և անտի փրկեսցէ զքեզ՝ և անտի ապրեցուսցէ զքեզ Տր Աճ քո 'ի ձեռաց թշնամեաց քոց։
11 *Եւ արդ ժողովեցան 'ի վր քո ազգք բազումք. որք ասեն՝ եկա՛յք, ոտնհար լիցուք՝ և տեսցեն աչք մեր 'ի վր սիօնի։
12 *Եւ նոքա ո՛չ գիտացին զխորհուրդս Տն. և ո՛չ 'ի միտ առին զկամս նր. զի ժողովեաց զնս իբրև զորան 'ի կալ։
13 *Կանգնեա՛ց՝ և կա՛ս զնս դուստր սիօնի. զի զեղջիւրս քո արարից երկաթիս. և զկճղակս քո պղնձիս. մանրեսցես զժողովուրդս բազումս՝ և փշրեսցես նոքօք զազգս. և մատուսցես Տն զբազմութիւն նոցա. և զզօրութիւն նոցա Տն ամենայն երկրի։

## Գլ: Ե:

1 Արդ պաշարեսցի դուստրն ցանգով՝ զի զնեղութիւն կարգեաց 'ի վր ձեր. գաւազանաւ հարցեն զծնօտս ազգաց Իլի։
2 *Եւ դու բեդղեհեմ տուն եփրաթայ սակաւաւոր իցես լինել 'ի հազարաւորս յուդայ. 'ի քէն ելցէ ինձ լինել իշխան Իլի. և ելք նորա 'ի սկզբանէ աւուրց աշխարհի։
3 *Վս այնորիկ տացէ զնս մինչև 'ի ժամանակ ծննդականին. ծնցի, և մնացորդք եղբարց նորա դարձցին առ որդիսն Իլի։
4 *Եւ կացցէ, և տեսցէ, և հովուեսցէ հօտի իւրոյ զօրութբ Տն. և 'ի փառս անուան Տն Այ իւրեանց հաստատեսցին. զի այժմ մեծասցին մինչև 'ի ծագս երկրի։
5 *Եւ եղիցի 'ի նմա խաղաղութի. յորժամ եկեսցէ ասորեստանեայն յերկիր ձեր՝ և յորժամ հասցէ յաշխարհս ձեր՝ յարուսցէ 'ի վր նր հինգ հովիւս՝ և ութն վարիչս մարդկան։
6 *Եւ հովուեսցեն զասորեստանեայն սրով. և զերկիրն նեբրօթայ 'ի պատնիշի իւրում. և փրկեսցէ զքեզ յասորեստանւոյն՝ յորժամ եկեսցէ յերկիր ձեր. և յորժամ հասցէ 'ի վերայ սահմանաց ձերոց։
7 *Եւ եղիցի մնացորդն յակոբայ 'ի հեթանոսս՝ 'ի մէջ ազգաց բազմաց՝ իբրև զցօղ անկեալ 'ի Տէ. և իբրև կաթիլ 'ի վր սիզոյ՝ որպէս զի մի ժողովեսցի 'ի մի. և մի մնասցէ 'ի մէջ որդւոց մարդկան։
8 *Եւ եղիցին մնացորդքն յակոբայ 'ի հեթանոսս՝ 'ի մէջ ազգաց բազմաց իբրև զառիւծ 'ի մէջ խաշին անտառի. և իբրև զկորիւն առիւծու 'ի մէջ հօտից խաշանց. զորօրինակ յորժամ անցեալ զատուցանիցէ, և յափշտակիցէ, և ո՛չ ոք իցէ՝ որ թափիցէ։
9 *Բարձրասցի ձեռն քո 'ի վր նեղչաց քոց. և ամ թշնամիք քո սատակեսցին։
10 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր. սատակեցից զերիվարս 'ի միջոյ քումմէ. և կորուսից զկառս քո։
11 *Եւ սատակեցից զքաղաքս երկրի քոյ՝ և բարձից զամ ամուրս քո. և բարձից զամ կախարդութիւս քո 'ի ձեռաց քոց. և
12 հարցուկք ո՛չ եղիցին 'ի քեզ։ *Եւ ջնջեցից զդրօշեալս քո. և զարձանս քո 'ի միջոյ քումմէ. և ո՛չ ևս երկիրպագցես գործոց ձեռաց քոց։
13 *Եւ կոտորեցից զանտառս 'ի միջոյ քումմէ. և
14 ապականեցից զքաղաքս քո։ *Եւ արարից բարկութբ և սրտմտութբ ըզ վրէժխնդրութի 'ի մէջ ազգաց. փոխանակ զի ո՛չ լուա՛ն։

## Գլ: Զ:

1 Լուարո՛ւք զայս՝ զոր ասաց Տր. արի՛ և դատեա՛ց ընդ լերինս. և բլուրք
2 լուիցեն ձայնի քում։ *Լուարո՛ւք բլուրք զդատաստան Տն. և ձորք՝ և հիմունք երկրի. զի դատաստան է Տն ընդ ժողովրդեան իւրում. և ընդ Իլի յանդիմանեսցի։
3 *Ժողովուրդ իմ. զի՞ արարի քեզ. կամ ի՞ւ տրտմեցուցի զքեզ. կամ ի՞ւ նեղեցի զքեզ՝ տո՛ւր ինձ պատասխանի։ (Միքէ. 2. 5.)
4 *Փոխանակ զի հանի զքեզ յերկրէն եգիպտացւոց՝ և 'ի տանէ ծառայութե փրկեցի զքեզ. և առաքեցի առաջի քո զմովսէս՝ և զահարոն՝ և զմարիամ։
5 *Ժողովուրդ իմ յիշեա՛, զինչ խորհեցաւ վս քո բաղակ թագաւոր մովաբացւոց. և զինչ ետ նմա պատասխանի բաղաամ որդի բէօրայ 'ի վիճակացն՝ մինչև 'ի գաղգաղայ. զի ծանիցի արդարութի Տն։ (Թուոց 22. 5. և 23. 7.)
6 *Ի՞ւ կանխեցից առ Տր՝ ապաւինեցայց յԱծ իմ բարձրեալ. եթէ կանխեցի՞ց առ նա ողջակիզօք՝ և որթօք տարևորօք։
7 *Միթէ իցէ՝ ընկալցի՞ Տր Ռ հազարաւորս խոյոց. կամ Ռ բիւրաւորս նոխազաց պարարտաց. միթէ տա՞ց զանդրանիկս իմ վս ամպարշտութեց. և զպտուղ միջոյ իմոյ վս մեղաց անձին իմոյ։
8 *Պատմեցաւ քեզ ո՞վ մարդ՝ զինչ է բարի. կամ զինչ խնդրէ 'ի քէն Տր. բայց առնել իրաւունս՝ և սիրել զողորմութի. և պատրաստ լինիլ երթալ զհետ Տն այ քոյ։
9 *Ձայն Տն 'ի վր քաղաքի դոչեսցի. և ապրեցուսցէ զերկիւղածս անուան նր. լո՛ւր ազգ՝ ո՛ հանդերձեսցէ զքաղաք։
10 *Եթէ ոչ հուր՝ և տուն անօրինի որ գանձէ զգանձս անօրէնս և հպարտութբ զանիրաւութի։
11 *Եւ իցէ՞ թէ արդարացի կաշառօք անօրէնն. և պայուսակաւ

Margin: Մատթ. 2. 6. Յովհ. 7. 42.

կշռոց նենգութե՟ ։ * Ուստի զտունսն 12 իւրեանց լցին ամպարշտութեամբք. և բնակիչք նր՟ խօսեցան զանիրաւութի՟. և լեզուք նց՟ մեծաբանեցին 'ի բերանս իւրեանց ։ * Եւ ես հարի զքեզ ապականութե՟ 13 վն՟ մեղաց քոց ։ * Դու կերիցես, և մի՛ 14 յագեսցիս. և մթեսցի զքեզ. և ըմբռնեսցիս՝ և մի՛ ապրեսցիս. որք միանգամ ապրեսցին, 'ի սուր մատնեսցին ։ *‖ Դու 15 սերմանեսցես, և մի՛ հնձեսցես. դու կթեսցես զձէթ՝ և մի՛ օծցիս իւղով. և մի՛ արբցես զգինի ։ * Եւ ապականեսցին 16 անօրէնք ժողովրդեան իմոյ՝ և ա՟մ գործ տանն աքայաբու. և գնացիք ը՟ խորհրդոց նց՟. զի մատնեցից զձեզ յապականութի՟. և զբնակիչս քո 'ի շչիւն. և զնախատինս ժողովրդոց ընկալջիք ։

‖ Օրէ. 28. 38. Անգէ. 1. 6.

## ԳԼ ։ Է.

Վա՜յ է ինձ. զի եղէ իբրև զհասկա- 1 քաղ 'ի հունձս. և իբրև զճռաքաղ 'ի կութս. ո՛չ գոյր ողկոյզ յառաջնոյ բերոյն, ուստի ուտէի ։ * Վա՜յ ան- 2 ձին իմում. զի կորեաւ երկիւղած յերկրէ. և ո՛չ գոյ ուղիղ 'ի մէջ մարդկան. ամենեքին արեամբ դատին. իւրաքանչիւր զընկեր նեղելով նեղեն ։ * Ձեռս 3 իւրեանց պատրաստեն 'ի չար ։ իշխանն խնդրէ՝ և դատաւորն խօսի բանս խաղաղութե՟ ը՟ ցանկութե՟ անձին իւրոյ ։ * Եւ հանից զբարութի՟ նց՟ իբրև զցեց՝ 4 որ ուտէ, և շրջի 'ի վ՟ր կանոնի. յաւուր այցելութե՟ վա՜յ վա՜յ. վրէժխնդրութի՟ք քո եկին՝ հասին. արդ եղիցին լալիք նց՟ ։ * Մի՛ հաւատայք սիրելեաց. և մի՛ 5 յուսայք յիշխանս. և յանկողնակցէ քումմէ զգո՛յշ լեր պատմել ինչ նմա ։ *‖ Զի որդի անարգէ զհայր. և դուստր 6 յարիցէ 'ի վ՟ր մօր իւրոյ. նու 'ի վ՟ր սկեսրի իւրոյ. ‖ Եւ թշնամիք առն ընտանիք իւր ։ * Այլ ես Տ՟ն ակն կալայց. սպասե- 7 ցից փրկչի իմոյ. և լուիցէ ինձ Տ՟ր Ա՟ծ իմ ։ * Մի՛ ոտնհար լինիր ինձ թշնամի 8 իմ՝ զի գլորեցայ. միւսանգամ կանգնեցայց. զի եթէ նստայց 'ի խաւարի.

‖ Մատ. 10. 21. ‖ Մատ. 10. 36.

9 Տ՟րէ իմ լոյս ։ * Բարկութե՟ Տ՟ն համբերից՝ զի մեղայ նմա. մինչև արդարացուսցէ զդատաստան իմ. և արասցէ ինձ իրաւունս, և հանցէ զիս 'ի լոյս. և 10 տեսից զարդարութի՟ նորա ։ * Եւ տեսցէ թշնամին իմ, և ծածկեսցէ զնա ամօթ. որ ասէր ցիս՝ ո՞ւր է Տ՟ր Ա՟ծ քո. աչք իմ տեսցեն 'ի նա. արդ եղիցի կոխան իբրև զկաւ 'ի ճանապարհի ։ 11 * Օր ծեփոյ աղիւսոյ. և ջնջումն քո է- 12 ղիցի օրն այն ։ * Եւ քաղաքք քո եկեսցեն 'ի պաշարումն՝ և յաւար ասորեստանեայց. և քաղաքք քո ամուրք 'ի բաժինս. 'ի ծովէ մինչև ցգետն. և 'ի ծովէ մինչև 'ի ծով. և 'ի լեռնէ մինչև 13 ցլեառն ։ * Եւ եղիցի երկիրն յապականութի՟. համդերձ բնակչօքն իւրովք 14 'ի պտղոյ գործոց նց՟ ։ * Արածեա՛ զժողովուրդ քո գաւազանաւ ցեղից քոց. զխաշինս ժառանգութե՟ քո. որք բնակեալ են առ անձինն յանտառի՝ 'ի մէջ կարմեղայ. արածեսցին 'ի բասան. և 'ի գաղաադ ըստ աւուրցն յաւիտենից ։ 15 * Եւ ըստ աւուրց ելիցն քոց յերկրէն եգիպտացւոց ցուցից նց՟ սքանչելիս ։ 16 * Տեսցեն հեթանոսք՝ և ամաչեսցեն յամենայն զօրութե՟ իւրեանց. դիցեն զձեռս 'ի վերայ բերանոց իւրեանց. և 17 ականջք նոցա խլասցին ։ * Լիզեսցեն զհող իբրև օձք՝ որք սողին ընդ երկիր. խռովեսցին 'ի պաշարման իւրեանց. և 'ի Տ՟է Ա՟յ մերմէ զարհու- 18 րեսցին, և երկիցեն 'ի քէն ։ *‖ Ո՞վ է Ա՟ծ իբրև զքեզ՝ որ բառնաս զանօրէնութիւնս. և զանցանես զանիրաւութի՟ս մնացորդաց երկրի 'ի ժառանգութե՟ իւրոյ. և ոչ ունի 'ի վկայութի՟ զբարկութի՟ իւր, զի կամեցօղ ողոր- 19 մութե՟ է ։ * Դարձցի, և գթասցի 'ի մեզ. և ընկղմեսցէ զմեղս մեր. և ընկեսցէ 'ի խորս ծովու զամենայն զա- 20 նօրէնութիւնս մեր ։ * Տացէ զճշմարտութի՟ յակոբայ՝ զողորմութի՟ աբրահամու. ո՞րպէս երդուար հարցն մերոց՝ ըստ աւուրցն առաջնոց ։

‖ Երեմ. 10. 6. Գործ. 10. 43.

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՆԱՒՈՒՄԱՅ ։

Գլուխ Առաջնորդ ։

Աղաղակ Նինուէի . Գիրք տեսլեան Նաւումայ 1 Եղկեսացւոյ ։

ԱՍՏՈՒԱԾ ՆԱԽԱՆ- 2 ձոտ՝ և վրէժխնդիր է Տ՟ր բարկութե՟. և խնդրէ Տ՟ր զվրէժ 'ի հակառակորդաց իւրոց. և բառնայ ինքն զթշնամիս իւր ։ * Տ՟ր երկայնամիտ՝ 3 և մեծ է զօրութի՟ նր՟. և արդարացուցանելով ոչ արդարացուցանէ Տ՟ր. վախճանաւ՝ և շարժմամբ է ճանապարհ նր՟. հողմք երիվարք են նր՟՝ և ամպք փոշի 4 ոտից նր՟ ։ * Սաստէ ծովու՝ և ցամաքեցուցանէ զնա. և զա՟մ գետս աւերէ ։ Նուաղեցաւ բասանացին և կարմեղոս. և ա՟մ ծաղիկք լիբանանու պակասե- 5 ցան ։ * Լերինք շարժեցան 'ի նմանէ. և բլուրք սասանեցան ։ խախտեցաւ եր

կիր

կիր յերեսաց նր. և համօրէն ամ բնա
կիչք նր։ *Առաջի բարկութե նորա ո՛ 6
հանդարտեսցի. և ո՛ կացցէ ընդդէմ
բարկութե սրտմտութե նր։ սրտմտու
թի նր հալէ զիշխանութիւս. և վէմք
խորտակեցան 'ի նմանէ։ *Քաղցր է 7
Տր՝ որոց սպասեն նմա յաւուր նեղու_
թե. և ճանաչէ զերկիւղածս իւր։
*Եւ հեղեղաւ ճանապարհաց արասցէ 8
վախճան յարուցելոց 'ի վր. և զթշնա_
միս նր խաւար հալածեսցէ։ *Զի՞նչ 9
խորհիք զՏէ. կատարած ինքն արաս_
ցէ. և ոչ խնդրեսցէ կրկին զնոյն վրէժ
խնդրութի 'ի նեղութե։ *Զի մինչև 10
'ի հիմն իւրեանց խոպանասցին։ իբրև
զգեղձ պատեալ կերիցի. և իբրև զե_
ղէգն լի երաշտութբ։ *'Ի քէն ելցէ 11
խորհուրդ զՏէ չարիս խորհիլ հակա_
ռակութբ։ *Այսպէս ասէ Տր 'ի վր իշ_ 12
խանաց ջուրց բազմաց՝ այնպէս զա_
տուսցին. և լուր քո ոչ ևս լուիցի։ *Եւ 13
արդ խորտակեցից զգաւազան նորա 'ի
քէն. և զկապանս քո խզեցից։ *Եւ 14
պատուիրեսցէ վն Տն. և ոչ ևս սերմա
նեսցի յանուանէ քումմէ. 'ի տանէ այ
քումմէ ջնջեցից զդրօշեալս. և զձու_
լածոյսն արարից 'ի գերեզման քեզ։
*Զի ահա երագեն ոտք 'ի վերայ լե 15
րանց աւետարանչաց՝ և որ պատմէ
զխաղաղութի։ տօնեա՛ զտօնս քո յու_
դա. հատո՛ զուխտ քո. զի ոչ ևս յաւել_
ցին յանցանել 'ի հնանալ։ վախճանե_
ցաւ՝ մաշեցաւ՝ և բարձաւ։

Եսայ. 52. 7. Հռոմ. 10. 15.

ԳԼ։ Բ։

Քանզի ել՝ որ փչէր ընդ երեսս քո. 1
և ազրեցուցանէ 'ի նեղութէ։
դիտեա՛ զճանապարհ, պնդեա՛ զմէջ.
զօրացի՛ր զօրութբ յոյժ։ *Զի դար_ 2
ձոյց Տր զհպարտութիւն յակոբայ՝ իբ_
րև զհպարտութիւն իլի. զի թօթափե_
լով թօթափեցին զնս. և զուռս նորա
ապականեցին։ *Զի զէն զօրութե նր 3
'ի մարդկանէ. զարս հզօրս որք խաղայ_
ին ընդ հրոյ. երասանակք կառաց նց
յաւուր պատրաստութե նց։ խռովես_
ցին հեծեալք 'ի ճանապարհս։ *Եւ 4
խռնեսցին 'ի հրապարակս. տեսիլ նոցա
իբրև զամբարաց հրոյ. և իբրև զփայ
լակն յայսկոյս և յայնկոյս ընթանան։
*Յիշեսցեն մեծամեծք նորա՝ և փախի 5
ցեն 'ի տուէ. և կասեսցին 'ի ճանա_
պարհս իւրեանց։ և փութասցին 'ի պա
րիսպս. և պատրաստեսցեն զառաջա_
պահս իւրեանց։ *Դրունք բացան քա 6
ղաքաց. և կործանեցան արքունիք։
*Եւ ստացուածք յայտնեցան։ ինքն 7
ելանէր. և նաժիշտք իւր առաջի գայ_
ին։ իբրև զաղաւնիս 'ի սրտից իւրեանց

8 մնչէին։ *Եւ ջուրք նինուէի իբրև
զջուրս աւազանի. և նոքա փախեան 'ի
քէն՝ և ոչ կալան զտեղի. և ոչ ոք էր՝ որ
9 հայէր։ *Յափշտակէին զարծաթ.
յափշտակէին զոսկի. և ոչ գոյր չափ
զարդու նորա։ ծանրացան քան զամ
10 սպասք նր ցանկալիք։ *Թօթափումն և
ձկտումն՝ և սոսկումն սրտի՝ և լքումն
ծնգաց՝ և երկունք 'ի վր ամ միջոյ. և
երեսք ամենեցուն իբրև զայրեցած
11 պուտան։ *Ո՞ւր են մայրիք առիւծուցն
և որսք կորեանց նց. ուր չոգաւ առ_
իւծն մտանել. կորիւն առիւծուն՝ և
12 ոչ ոք էր՝ որ երկեցուցանէր։ *Առիւծ
որսաց բաւական կորեանց իւրոց. և
հեղձոյց կորեանց իւրոց. և ելից զմայ
րիս իւր որսով՝ և զբնակութի իւր յափշ
13 տակութբ։ *Ահաւասիկ ես 'ի վր քո՝
ասէ Տր ամենակալ. և այրեցից ծխով
զբազմութի քո՝ և կերիցէ սուր զա_
ռիւծս քո. և բարձից յերկրէ զորս
քո. և ոչ ևս լուիցին գործք քո։

ԳԼ։ Գ։

1 Ո՛հ քաղաք արեանց ամենևին սուտ.
լի անիրաւութբ՝ որոյ զննեսցի որսդ։
2 *Ձայն հարուածոյ՝ ձայն շարժման
անուոյ, շաչիւն կառաց՝ շահատակիւն
3 հեծելոյ։ *Փայլիւն զինու՝ շողալ սու
սերի՝ թաւալագլոր խաղալ վիրաւո_
րաց՝ և ոչ գոյր չափ ազգաց նր։ և տկա
4 րասցին 'ի մարմինս իւրց։ *'Ի բազում
պոռնկութե պոռնիկ գեղապանծ.
գլուխ կախարդաց՝ որ վաճառէր
զազգս 'ի պոռնկութե իւրում. և զտոհմս
5 կախարդանօք իւրովք։ *Ահաւա_
սիկ ես 'ի վր քո՝ ասէ Տր Այ ամենա_
կալ. և յայտնեցից զյետուստ քո. և
արկից զերեսօք քովք. և ցուցից ազ_
գաց զամօթ քո. և թագաւորութեց
6 զանարգանս քո։ *Եւ ընկեցից 'ի վր
քո զպղծութիւս՝ և զաղտեղութիւս քո.
7 և արարից զքեզ խայտառակ։ *Եւ
եղիցի, ամ որ տեսանիցէ զքեզ՝ իջա_
նիցէ, և ասասցէ. եղո՛ւկ դու նինուէ.
ո՞վ իցէ՝ որ հեծիցէ վն քո։ ուստի՞ խնդ_
8 րեսցուք քեզ մխիթարութի։ *Պատ_
րաստեա՛ բաժին՝ կազմեա՛ ջնար վի_
ճակդ ամօնայ. որ բնակեալն է 'ի մէջ
գետոց։ և ջուրք շուրջ զնովաւ. որոյ
ակիզբն ծով՝ և ջուրք պարիսպ նորա։
9 *Եթէովպացիք՝ և եգիպտոս զօրութի
նորա. և չիք չափ փախստեան նորա. և
10 լիբէացիք եղեն օգնականք նր։ *Սա_
կայն և նա յողդողդեալ գերի գնաս_
ցէ. և զտղայս նոցա զարկի հարցեն. 'ի
սկզբան ճանապարհաց նր՝ և 'ի վր ամ
պատուականաց նր վիճակս արկանի_
ցեն։

Եզեկ. 24. 9. Ամբակ. 2. 12. Եսայ. 47. 3.

ցեն․ և ամ մեծամեծք նր ձեռակապօք կապեսցին։ 11 *Եւ դու արբեսցիս․ և խնդրեսցես քեզ ոտնկայ 'ի թշնամեաց։ 12 *Եւ ամ ամուրք քո իբրև զդիտակ թզոյ․ որք թէ շարժեսցին՝ անկանիցին 'ի բերան ուտողաց։ 13 *Ահա ազգք քո իբրև զկանայս են 'ի քեզ։ թշնամեաց քոց բացցին բանալով դրունք երկրին քո․ և կերիցէ հուր զնիգս քո։ 14 *Լից 'ի քեզ ջուր պաշարման․ և պընտեա՛ զամուրս քո․ մուտ 'ի կաւ՝ և կոխեա՛ ընդ յարդի․ և պնտեա՛ քան զաղիւս։ 15 *Անդ կերիցէ զքեզ հուր․ և սատակեսցէ զքեզ սուր․ և կերիցէ զքեզ իբրև զմարախ․ և ծանրասցի իբրև 16 զջորեակ։ *Բազմացուցեր զվաճառս քո իբրև զաստեղս երկնից․ դիմեաց 17 ջորեակ՝ և թռեաւ։ *Խաղաց իբրև զգրուիճ․ և խառնիճաղանճ քո իբրև զմարախ մածեալ զցանգովն յաւուր ցրտոյ։ ծագեցաւ արև․ խաղաց՝ և ծա 18 նեաւ տեղի իւր։ վայ նց։ *Նիրհեցին հովիւք քո․ թագաւորն ասորեստանեայց կոտորեաց զզօրս քո․ չուեաց ազգ քո 'ի լերինս․ և ոչոք էր՝ որ ժողովէր 19 *Թարախեցան վէրք քո․ և չիք բժշկութի բեկման քում․ ամենեքին որք լուան զգոյժ քո՝ ծափս հարցին 'ի վր ձեռաց քո․ քանզի յո՞յր վերայ ոչ հոգաւ չարութի քո հանապազ։

և եղջերու անգոսնեալ․ և դառն խնդրեսցես զօգնութ 'ի թշնամեաց․

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱՄԲԱԿՈՒՄԱՅ։

Գլուխ Առաջնորդ։

1 Աղօթ՝ զոր եդես ամբակում մարգարէ։

2 ՄԻՆՉԵՒ ՑԵ՞ՐԲ ՏԷՐ աղաղակեցեմ, և ոչ լուիցես․ գոչեցեմ առ քեզ զրկեալ՝ և ոչ փրկիցես։ 3 *Ընդէ՞ր ցուցեր ինձ աշխատութիւն՝ և վաստակս․ տեսանել զթշուառութի՝ և զամպարշտութիւն առաջի իմ եղև դատաստան․ և առնոյր դատաւորն կաշառս։ 4 *Վն այնորիկ ցրուեցան օրէնք․ և իրաւունք 'ի գլուխ ոչ ելանեն․ զի ամպարիշտն յաղթահարէ զարդարն․ վն այնորիկ ելանէր դատաստանն թիւր։ 5 *‖Տեսէ՛ք արհամարհոտք՝ և հայեցարո՛ւք՝ և զարմացարո՛ւք զարմանս՝ և եղծարո՛ւք․ զի գործ մի գործեմ ես յաւուրս ձեր․ որում ո՛չ հաւատայցէք թէպէտ և ոք պատմիցէ ձեզ։

‖Գործ․ 13․ 41․

6 *Զի ահա ես զարթուցանեմ զքաղդէացիս՝ զազգ դառն՝ և զերագ․ որ գնայ ը լայնութի երկրի՝ ժառանգել զխորանս՝ որք ոչ իւրք են։ 7 *Ահեղ՝ և երևելի՝ դատաստան իւր յանձնէ իւրմէ եղիցի․ և առած նր յինքենէ ելցէ։ 8 *Վազեսցեն առաւել քան զինձ․ երիվարք նց երագունք քան զգայլս արաբիոյ։ ասպատակեսցեն սպառազէնք նորա․ և դիմեսցեն 'ի հեռաստանէ․ և սլասցին իբրև զարծուիս 'ի վր կերակրոյ։ 9 *Կատարած ամպարշտաց հասցէ․ դարձելոցն ընդդէմ երեսաց նց․ կուտեսցէ զգերի իբրև զաւազ։ 10 *Եւ ինքն ընդ թագաւորս փափկասցի՝ և բռնաւորք խաղալիկք նր․ և ինքն ընդ ամ ամուրս խաղալով խաղասցէ․ և կուտեսցէ հողակոյտս և ընկալցի զնա։ 11 *Յայնժամ փոխեսցին միտք նր․ անցցէ, և հաճեսցի․ այս զօրութե իմոյ է։ 12 *Ո՞չ ապաքէն դու ես 'ի սկզբանէ ՏՐ Ած մեր․ և մի՛ մեռցուք ՏՐ․ 'ի դատաստան եդեր զնա։ և ստեղծեր զիս յանդիմանել զխաղ նր։ 13 *Սուրբ է աչք քո 'ի տեսանելոյ զչարիս․ և հայիլ յաշխատութի ո՛չ կարասցես․ զմէ՞ հայեցար յարհամարհոտս և ստունգանեցեր 'ի կլանել ամպարշտի զարդարն։ 14 *Եւ առնիցես զմարդիկ իբրև զձկունս ծովու․ և իբրև զսողունս՝ որոց ո՛չ գոյ առաջնորդ։ 15 *Զվախճանն կարթիւ կորզեաց․ և ձգեաց զնա ցանցիւ իւրով․ և ժողովեաց զնա ուռկանօք իւրովք․ վն այնորիկ ուրախ եղիցի՝ և ցնծասցէ սիրտ նր։ 16 *Վն որոյ զոհեսցէ ուռկանին իւրում․ և խունկս ծխեսցէ ցանցին իւրում․ զի նոքօք պարարեաց զբաժին իւր․ և կերակուր իւր ընտիր։ 17 *Վն այնորիկ սփռեաց զցանց իւր՝ և միշտ կոտորել զազգս ո՛չ խնայեսցէ։

## ԳԼ․ Բ։

1 'Ի ‖պահու իմում կացից՝ և ելից 'ի վր վիմի․ և դիտեցից տեսանել զինչ խօսեսցի ը իս․ և զինչ տացէ պատասխանի յանդիմանութե իւրում։ 2 *Պատասխանի ետ ինձ Տէր՝ և ասէ․ գրեա՛ զտեսիլդ զայդ յայտնապէս 'ի տախտակս․ զի որ ընթեռնու, համարձակ ընթեռնուցու։ 3 *Զի տակաւին տեսիլդ 'ի ժամանակս է․ և ծագեսցի իսպառ՝ և ո՛չ յունայնութի։ բայց թէ անա_

‖Եսայ․ 21․ 8․

անագանիցի, համբեր նմա. զի որ գա-
լոցն է՝ եկեսցէ՝ և ոչ անագանեսցի:
*Եւ եթէ երկմտեսցի ոք՝ ոչ հաճես 4
ցի ընդ նա անձն իմ: ‖զի արդարն ՚ի
հաւատոց կեցցէ: *Բայց կարծօղն՝ և 5
արհամարհօղն այր ամբարտաւան է՝
և ոչինչ վճարեսցէ: որ ընդ արձակեաց
իբրև զդժոխս զանձն իւր. և անյագ
եղև իբրև զմահ. և ժողովեսցէ առ
ինքն զամ հեթանոսս. և զազգս ամ
յինքն ամփոփեսցէ: *Ոչ ապաքէն զայս 6
ամ առակ զնմանէ առակեսցեն. և զնա
արկցեն յերգ՝ և ասասցեն: վայ, որ յա
ճախէ անձին իւրում, որ ոչ իւր իցէ. և
մինչև ցե՞րբ ծանրացուցանէ զանուր
իւր ծանրութբ: *Եւ յանկարծակի 7
յարիցեն կերիչք նորա. և զարթիցեն
դաւաճանք նր. և եղիցիս նց յափշտա
կուն: *Զի դու կողոպտեցեր զազգս 8
բազումս՝ և զքեզ կողոպտեսցեն ամ
մնացորդք ժողովրդոց՝ վասն արեանց
մարդկան՝ և ամպարշտութե երկրի՝ և
քաղաքի՝ և ամ բնակչաց նր: *Վայ, 9
որ ագահէ զագահութի չար՝ տան իւրոյ՝
դնել ՚ի բարձունս զբոյն իւր՝ կորզել ՚ի
ձեռաց չարաց: *Խորհեցար զամօթ 10
տան քոյ՝ սպառեցեր զազգս բազումս.
և յանցեաւ անձն քո: *Զի քար ՚ի հի 11
մանէ աղաղակեսցէ. և որդն ՚ի փայտէ
գոչեսցէ զայդ: *‖Վայ, որ շինէ զքա- 12
ղաքս արեամբ. և պատրաստէ զքաղաք
անիրաւութբ: *Ոչ այդ ամ ՚ի Տէ 13
ամենակալէ է. և պակասեցան ժողո-
վուրդք բազումք ՚ի հրոյ. և ազգք բա
զումք նուաղեցան: *Զի լցաւ երկիր 14
գիտութբ փառաց Տն իբրև ջուր բա
զում՝ որ ծածկէ զծովս: *Վայ՝ որ ար 15
բուցանէ ընկերի իւրում հրապղտո
պղտորս. և արբուցանէ, զի հայեսցի
յայրս նց: *Զ յագուրդ անարգանաց 16
՚ի փառաց արբ և դու. շարժեաց՝ և դո
ղա. պաշարեաց զքեզ բաժակ աջոյ Տն.
և ժողովեցաւ անարգութի ՚ի վր փա
ռաց քոց: *Զի ամպարշտութի լիբա 17
նանու ծածկեսցէ զքեզ. և թշուառու
թի գազանաց զարհուրեցուսցէ զքեզ
վն արեանց մարդկան՝ և ամպարշտու
թեց երկրի. և քաղաքի՝ և ամ բնակ-
չաց նր: *Զինչ օգուտ է դրօշելոյ՝ զի 18
դրօշեցին զնա՝ ստեղծին զնա ձուլա-
ծոյ՝ երևոյթ սուտ: զի յուսացաւ՝ որ
ստեղծն ՚ի ստեղծուած իւր. առնել
իւր կուռս անօգուտս: *Վայ, որ ասէ 19
ցփայտ՝ թափեա՛ց՝ և զարթի՛ր, և
ցքարն թէ բարձրացի՛ր՝ և նա է երև-
ոյթ առաջօք: և նա է կռած արծաթոյ՝
և ոսկւոյ. և ամենևին շունչ ոչ գոյ ՚ի նմա:
*‖Բայց Տր ՚ի տաճարի սրբութե իւրոյ. 20

‖Յով. 3.36. Հռով. 1.17. Գաղա. 3.11. Եբրա. 10.38. ‖Միքէ. 24.9. Նաւում 3.1. Մնչեան ‖Սաղմ. 10.5.

և երկիցէ յերեսաց նորա ամենայն
երկիր:

## ԳԼ: Գ.

1 Աղօթք Ամբակումայ մարգարէի երգով:

2 ՏՐ զլուր քո լուայ՝ և երկեայ: Տր
հայեցայ ՚ի գործս քո՝ և զար-
հուրեցայ. ՚ի մէջ երկուց գա-
զանաց ծանիցիս. ՚ի մերձենալ ամացն
յայտնեսցիս. ՚ի հասանել ժամանակին
երևեսցիս: ՚ի խռովել անձին իմոյ ՚ի
բարկութե զողորմութի յիշեսցես:
3 *Այ ՚ի Թեմանայ եկեսցէ. և սրբն ՚ի
հովանաւոր և յանտառախիտ լեռնէ:
(Հանգիստ): Ծածկեցին զերկինս փառք
նր. օրհնութբ նորա լի եղև երկիր:
4 *Ճառագայթք նր իբրև զլոյս եղիցի.
5 և եղջիւրք ՚ի ձեռին նորա: *Եւ անդ
հաստատեաց զսէր սաստիկ զօրութե
իւրոյ: առաջի երեսաց նորա գնասցէ
6 բան. և ելցէ ՚ի դաշտ զկնի նր: *Եւ
եկաց՝ և շարժեցաւ երկիր: հայեցաւ՝
և հալեցան ազգք: լերինք խորտակե-
ցան բռնութբ: և բլուրք յաւիտենա-
կանք հալեցան: զճնացս նր յաւիտենա
7 կանս: *Փոխանակ աշխատութեց տե
սի. խորանք եթէովպացւոց զարհուրե
ցան. և խորանք երկրին մադիամու:
8 *Միթէ գետոց բարկացիս Տր. կամ
սրտմտութի քո ՚ի վր գետոց. կամ ա-
պատակք քո ՚ի վր ծովու: Զի ելցես
յերիվարս քո. և հեծելութի քո փր-
9 կութի է: *Լարելով լարեսցես զա-
ղեղն քո ՚ի վր իշխանութեն ասէ Տր:
10 գետոց պատառեսցի երկիր: *Տեսցեն
զքեզ ազգք՝ և երկնեսցեն. որ ցանես
զջուրս գնացից: Ետուն անդունդք
զձայնս իւրեանց. զբարձրութի սաստ
11 կութե իւրոյ: *Բարձաւ արեգակն.
և լուսին եկաց ՚ի կարգի իւրում.
գնասցեն նետք քո ՚ի լոյս՝ ՚ի փայլիւն
12 փայլատականց զինուց քոց: *Սպառնա
լեօք նուաղեցուցեր զերկիր. և բար-
13 կութբ զիջուցես զազգս: *Ելեր ՚ի
փրկութի ժողովրդեան քոյ՝ փրկել
զօծեալս քո. արկեր զգլուխ անօրի-
նաց մահ. զարթուցեր զպարանոցս.
զկապանս մինչև ցպարանոցս իսպառ:
14 (Հանգիստ) *Խորտակեցեր ափշութբ ըզ
գլուխս բռնաւորաց. սասանեսցին ՚ի
նմա. արձակեսցեն զերասանակս իւրց
15 իբրև զտնանկ գաղտակեր: *Հաներ
՚ի ծով զերիվարս քո. պղտորել զջուրս
16 բազումս: *Զգուշացայ՝ և զարհու-
րեցաւ սիրտ իմ ՚ի ձայնէ աղօթից շր-
թանց իմոց: եմուտ դողումն յոսկերս
իմ. և խռովեցաւ փոր իմ՝ ՚ի ներքուստ
հանգեայց յաւուր նեղութե. ելանել ինձ

՚ի հարա- ւոյ ՚ի փա- րան

՚ի ժողովուրդ պանդխտութեան իմոյ։ * Օր 17 թշնամի ոչ տայցէ զպտուղ իւր. և մի՛ եղիցի ծնունդ որթոյ. ստեսցէ բեր ձի թենւոյ. և դաշտք մի՛ արասցեն զկերակուր. պակասեսցին հօտք ՚ի ձարակոյ. և 18 ոչ իցեն եզինք ՚ի մսուրս։ * Բայց ես ՚ի Տր ցնծացայց՝ և ուրախ եղէց յԱծ փրկիչ իմ։ * Տր Աստուած զօրութիւն իմ. և կարգեսցէ զոտս իմ ՚ի վախճան. և հանիցէ զիս ՚ի բարձունս յաղթել երգովն նր։

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՍՈՓՈՆԻԱՅ։

Գլուխ Առաջին:

1 Բանն Տն որ եղև առ Սոփոնիայ որդի Քուսեայ որդւոյ Գոդողեայ. որդւոյ Ամարեայ՝ որդւոյ Եզեկեայ՝ յաւուրս Յովսեայ որդւոյ Ամոնայ արքային Յուդայ։



2 ՊԱՆԴ ԱՆԿԱՆԵԼՈՎ ՊԱԿԱՍԵՍՑԻ ամ, յերեսաց երկրի՝ ասէ Տր։ 3 * Պակասեսցի մարդ և անասուն. պակասեսցին թռչունք երկնից՝ և ձկունք ծովու. և տկարասցին ամպարիշտք. և բարձից զանօրէնս յերեսաց երկրի՝ ասէ Տր։ 4 * Եւ ձգեցից զձեռն իմ՝ ՚ի վր Յուդայ. և ՚ի վր ամ բնակչաց Եհմի. և բարձից ՚ի տեղւոջէ յայդմանէ զանուն Բահաղու. և զանուանս քրմացն հանդերձ քահանայիւքն։ 5 * Որք երկիր պագանեն ՚ի տանիս զօրութեան երկնից. և որք երդնուին յանուն Տն արքային իւրեանց. և որք խոտորեին ՚ի Տէ։ 6 * Եւ որք ոչ խնդրեին զՏր. և որք ոչ ՚ի Տն կողմն էին։ 7 * Երկերուք յերեսաց Տն Այ. զի մերձ է օր Տն. զի պատրաստեաց Տր զզոհ իւր. և հրաւիրեաց զկոչնականս իւր։ 8 * Եւ եղիցի յաւուր զոհի Տն՝ խնդրեցից զվրէժ յիշխանաց՝ և ՚ի տանէ թագաւորին. և յամէ որք զգեցեալք են զհանդերձս օտարս։ 9 * Եւ խնդրեցից զվրէժ յայտնապէս յամենեցունց առաջի դրանդեաց յաւուր յայնմիկ. որք լնուին զտուն Տն Այ իւրեանց ամպարշտութբ՝ և նենգութբ։ 10 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր. ձայն աղաղակի ՚ի դրանէ խոցոտելոցն. և գոյժ յերկրորդ դրանէն. բեկումն մեծ ՚ի բլրոց։ 11 * Ողբացէք բնակիչք կոտորելոյ. զի նմանեցաւ ամ ժողովուրդ քանանացւոյ։ սատակեսցին ամենեքեան՝ որք հպարտացեալք են արծաթով։ 12 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ քննեցից զԵրուսաղէմ ճրագաւ. և խնդրեցից զվրէժ յարանցն՝ որք արհամարհեցին զպահպանութիս իւրեանց. որք ասէին ՚ի սիրտս իւրեանց.

տն, եւ որ դայլն

ոչ բարի ինչ առնէ Տր՝ և ոչ չար։ 13 * Եւ եղիցի զօրութիւն նց ՚ի յափշտակութիւն. և տունք նոցա յապականութիւն։ ‖ Շինեսցեն տունս, և մի՛ բնակեսցին ՚ի նոսա. տնկեսցեն այգիս, և մի՛ արբցեն զգինի նոցա։ 14 * Օր մերձ է օր Տն մեծն. մերձ և արագ յոյժ։ ձայն աւուր Տն խիստ՝ և դառն։ կարգեալ զօրաւոր։ 15 * ‖ Օր բարկութեան օրն այն. օր նեղութեան՝ և վտանգի։ օր թշուառութեան՝ և ապականութեան. օր խաւարի՝ և մգի. 16 օր ամպոյ՝ և մառախղոյ։ * Օր փողոյ՝ և աղաղակի ՚ի վր ամուր քաղաքաց՝ և 17 ՚ի վր անկեանց բարձանց։ * Եւ նեղեցից զմարդիկ. և գնասցեն իբրև զկոյրս. զի Տն մեղան. և առին զանուն նր ՚ի վր մնոտեաց. որք ոչինչ կարասցին օգնել նոցա։ և հեղցէ զարիւն նց իբրև զհող. և զմարմինս նց իբրև զաղբ։ 18 * ‖ Արծաթ նոցա՝ և ոսկի մի՛ կարասցէ փրկել զնս յաւուր բարկութեան Տն. ‖ և հրով նախանձու նր մաշեսցի ամ երկիր։ զի վախճան և տագնապ արասցէ ՚ի վերայ ամ բնակչաց երկրի։

Ամովս. 5.11.

Եզեկ. 30.7. Յովէլ. 2.11. Ամովս. 5.18.

Եզեկ. 7.19. Սոփ. 3.8.

Գլ: Բ:

1 Ժողովեցարուք՝ և խնդրեցէք ազգք 2 անխրատք։ * Մինչև եղեալ իցէք իբրև զծաղիկ անցաւոր. մինչև եկեալ իցէ օր բարկութեան սրտմտութե 3 Տն։ * Խնդրեցէք զՏր ամ խոնարհք երկրի։ իրաւունս արարէք՝ և զարդարութիւն խնդրեցէք՝ և տուք պատասխանի նոցա. զի ծածկիջիք յաւուր բարկութե Տն։ 4 * Օր Գազա յափշտակեալ լիցի. և Ասկաղոն յապականութիւն. և Ազոտոս ՚ի միջօրէի կործանեսցի, և Ակկարոն յարմատոյ խլեսցի։ 5 * Վայ, որք բնակեալ էք ՚ի վիճակս ծովուն բնակիչք կրետացւոց։ պատգամ Տն ՚ի վր ձեր՝ քանան երկիր այլազգեաց։ և 6 կորուսից զձեզ ՚ի բնակութէ։ * Եւ եղիցի կրետ ձարակ հօտից. և գոմք 7 խաշանց։ * Եւ եղիցի վիճակ ծովուն մնացորդաց տանն Յուդայ. և ՚ի նոսա ձարակեսցին. և ՚ի տունս Ասկաղոնի ՚ առ օթ դադարեսցեն յերեսաց որդւոցն Յուդայ. զի եկեալ է նոցա յայց Տր Աստուած իւրեանց. և դարձոյց զգերութի

Եզեկ. 22.27. Սոփ. 3.11.

սիրտս ․․․

թինց։ 8 *Լուայ զնախատինս մովաբու. և զկռփանս որդւոյն ամոնայ. որովք նախատէին զժողովուրդ իմ. և մեծաբանէին ՚ի վր սահմանաց իմոց։ 9 *Վն այնորիկ կենդանի եմ ես՝ ասէ Տր զօրութեանց Ած իՂի. զի մովաբ իբրև զսոդոմ եղիցի. և որդիքն ամոնայ իբրև զգոմոր։ և դամասկոս լքեալ իբրև զշեղջ կալոյ՝ և ապականեալ յաւիտեան. և մնացորդք ժողովրդեան իմոյ յափշտակեսցեն զնս. և մնացորդք ազգի իմոյ ժառանգեսցեն զնոսա։ 10 *Այս նց եկեսցէ փոխանակ հպարտութե նոցա. զի նախատեցին, և մեծաբանեցին ՚ի վր Տն ամենակալի։ 11 *Երևեսցի Տր ՚ի վր նոցա. և սատակեսցէ զամ աստուածս ազգաց. և երկիր պագցեն նմա իւրաքանչիւր ՚ի տեղւոջէ իւրեանց՝ ամ կղզիք ազգաց։ 12 *Եւ դուք եթեովպացիք՝ հարեալք սուսերաւ իմով էք։ 13 *Եւ ձգեսցից զձեռն իմ ՚ի վր հիւսիսոյ. և սատակեսցից զասորեստանեայսն. և եդից զնինուէ յապականութի. և անջրդի իբրև զանապատ։ 14 *Եւ արածեսցին ՚ի միջի նր հօտք. և ամ գազանք երկրի. և գետնաբուծք, և ոզնիք ՚ի յարկս նր բնակեսցին. և գազանք գոչեսցեն ՚ի նկուղս նորա. և ագռաւք ՚ի դրունս նր. քանզի իբրև զմայրս բարձրութի նորա։ 15 *Այս քաղաքն վրիժագործ բնակեալ յուսով. որ ասէր ՚ի սրտի իւրում. ես եմ, և ոչոք ևս իցէ յետ իմ. զիարդ եղև յապականութիւն՝ ճարակ գազանաց։ ամ որ անցանիցէ ընդ նա. շչեսցէ, և շարժեսցէ զգլուխ իւր։

Եսայ. 34.11.

## ԳԼ. Գ.

1 Ո՜հ երևելիդ՝ փրկեալ քաղաք աղաւնի։ 2 *Ոչ լուաւ ձայնի. և ոչ ընկալաւ զխրատ. ՚ի Տէր ոչ յուսացաւ. և առ Ած իւր ոչ մերձեցաւ։ 3 *Իշխանք նր իբրև առիւծունք գոչեսցեն. և դատաւորք նորա իբրև զգայլս արաբացւոց. որք ոչ թողին ինչ ՚ի վաղիւ։ 4 *Մարգարէք նր այսակիրք՝ արհամարհօղք. քահանայք նր պղծեն զսրբութիս։ և ամպարշտին յօրէնս։ 5 *Այլ Տր արդար է ՚ի միջի նր՝ և ոչ արասցէ անիրաւութի. ընդ առաւօտս կանխատացէ զիրաւունս իւր ՚ի լոյս. և ոչ թաքիցէ. և ոչ ծանիցէ զանիրաւութի ՚ի պահանջել։ 6 *Եւ ոչ իսպառ զանիրաւութի. ապականութբ կործանեսցէ զամբարտաւանս. ապականեցան անկիւնք նոցա. աւերեցից զճանապարհս նոցա. ամենևին մի ևս գնալ ընդ նոսա. պակասեցան քաղաքք նց 7 առ ՚ի չգոյէ բնակչաց։ *Ասացի թէ երկերուք յինէն՝ և ընկալարուք զխրատ. և ոչ սատակեսջիք յերեսաց նր. ըստ ամի որ չափ ինչ առից վրէժ ՚ի նմանէ. պատրաստեա կանխել ընդ առաւօտս. ապականեցան ամ ճիւղք նր։ 8 *Վն այդորիկ սպասեա ինձ՝ ասէ Տր յաւուր յարութե իմոյ ՚ի վկայութի. զի դատաստանք իմ ՚ի վր ազգաց ժողովել զթագաւորս. ՚ի հեղուլ ՚ի վր նոցա զբարկութի իմ. զամ բարկութի սրտմտութե իմոյ. *զի հրով նախանձու իմոյ մաշեսցի ամ երկիր։

Եզեկ. 22.27. Միք. 3.11.

Սոփ. 1.18.

9 *Զի յայնժամ դարձուցից ՚ի վր ժողովրդոց լեզու յազգս նոցա. ՚ի կարդալ ամենեցուն զանուն Տն. ՚ի ծառայել նոցա նմա ընդ միով լծով։ 10 *՚Ի գետոյն եթեովպացւոց ընկալայց զնս. ընդ ցրուեալսն մատուցանիցեն ինձ պատարագս։ 11 *Յաւուր յայնմիկ ոչ ամաչեսցես յամենայն գործոց քոց. որովք ամպարշտեցար առ իս. զի յայնժամ զերծից ՚ի քէն զչարութի ամբարտաւանութե քո՝ և ոչ ևս յաւելցես մեծաբանել ՚ի վր լերին սրբութե իմոյ։ 12 *Եւ թողից քեզ ժողովուրդ հեզ՝ և խոնարհ. և երկիցեն յանուանէ Տն։ 13 *Մնացորդք իսրայէլի ոչ արասցեն զանիրաւութի. և ոչ խօսիցին ՠնոտիս. և ոչ գտցի ՚ի բերան նց լեզու նենգաւոր. զի նոքա արածեսցին, և մակաղեսցին. և ոչոք իցէ, որ զարհուրեցուցանիցէ զնս։ 14 *Ուրախ լեր յոյժ դուստր սիոնի՝ և քարոզեա եէմ. ուրախ լեր՝ և զուարճացիր յամ սրտէ քումմէ դուստր եէմի։ 15 *Զի եհան ՚ի քէն Տր շուրջ զանիրաւութիս. փրկեաց զքեզ Տր ՚ի ձեռաց թշնամեաց քոց. թագաւոր իՂի Տր ՚ի միջի քում. և ոչ ևս տեսցես զչարիս։ 16 *՚Ի ժամանակի յայնմիկ ասէ Տր ցեէմ. քաջալերեա՛ սիոն՝ մի լքցին ձեռք քո։ 17 *Տր Ած ՚ի քեզ է՝ հզօրն. և փրկեսցէ զքեզ. ածցէ ՚ի վր քո ուրախութիս. և նորոգեսցէ զքեզ սիրով իւրով. և ուրախ լիցի ՚ի քեզ զուարճութբ իբրև յաւուր տօնի։ 18 *Եւ ժողովեցից զմանրեալսն քո վայ, 19 որ նախատիցէ զնա։ *Ահաւասիկ ես առնեմ վն քո ՚ի ժամանակին յայնմիկ. և փրկեցից զճնշեալն. և զմերժեալն ընկալայց. և արարից զնս ՚ի պարծանս, 20 և անուանիս ընդ ամ երկիր։ *Եւ ամաչեսցեն ՚ի ժամանակին յայնմիկ՝ յորժամ բարի արարից ձեզ. և ՚ի ժամանակի յորժամ ընկալայց զձեզ. զի տաց զձեզ անուանիս ՚ի պարծանս ընդ ամ ազգս երկրի. ՚ի դարձուցանել ինձ զգերութի ձեր առաջի ձեր՝ ասէ Տր։

ՄԱՐ.

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԱՆԳԵԱՅ:

## Գլուխ Առաջին:

||1. Եզր. 6. 1. Յամին երկրորդի դարեհի արքայի՝ յամսեանն վեցերորդի, որ օր մի էր ամսոյն. եղեւ բան Տն 'ի ձեռն Անգեի մարգարէի եւ ասէ: 1



ՕՍԵԱՑ ԸՆԴ ԶՕ-րոբաբելի որդւոյ սաղաթիելի յազգէ յուդայ. եւ ընդ յեսուայ որդւոյ յովսեդեկեայ քահանայի մեծի՝ եւ ասասցես: 2 * Այսպէս ասէ Տր ամենակալ. ժողովուրդդ այդ՝ ասեն. ոչ է հասեալ ժամանակ շինելոյ զտունն Տն: 3 * Եւ եղեւ բան Տն 'ի ձեռն անգեի մարգարէի՝ եւ ասէ: 4 * Եթէ ձեզ միայն իցէ ժամանակ բնակել 'ի տունս գմբեթեայս. եւ տունս իմ աւեր կայ: 5 *|| Եւ արդ՝ այսպէս ասէ Տր ամենակալ. կարգեցէք զսիրտս ձեր 'ի ճանապարհս ձեր: 6 * Սերմանեցէք բազում, եւ ժողովեցէք սակաւ. ուտէք, եւ ոչ լինէր 'ի յագուրդ. զգենուք, եւ ոչ ջեռնուք նոքօք. եւ որ զվարձս իւր ժողովէր՝ 'ի ծրարս ծակոտեալս ժողովէր: 7 * Այսպէս ասէ Տր ամենակալ՝ դիք զսիրտս ձեր 'ի ճանապարհս ձեր: 8 * Ելէք 'ի լեառն՝ հարէք զփայտ՝ եւ շինեցէք զտունդ. եւ հաճեցայց դովաւ՝ եւ փառաւորեցայց՝ ասէ Տր: 9 * Հայեցայք 'ի բազում, եւ եղեւ սակաւ. դուք 'ի ներքս 'ի տունս կրեցէք՝ եւ ես արտաքս փչեցի զայն. վասն այդորիկ այսպէս ասէ Տր ամենակալ. փոխանակ զի տունդ իմ աւեր է. եւ դուք ճեպեալ էք յիւրաքանչիւր տուն իւր: 10 * Վս այդորիկ երկինք կալցեն զանձրեւ քո. եւ երկիր արգելցէ զարդիւնս իւր: 11 * Եւ ածից սուր 'ի վերայ երկրի՝ եւ 'ի վր ցորենոյ՝ եւ 'ի վր գինւոյ՝ եւ 'ի վր իւղոյ՝ եւ 'ի վր ամ բուսոյ երկրի՝ եւ 'ի վր մարդկան՝ եւ 'ի վերայ անասնոց. եւ 'ի վր ամ վաստակոց ձեռաց նց: 12 * Եւ լուաւ զօրաբաբէլ որդի սաղաթիելի յազգէ յուդայ. եւ յեսու յովսեդեկեայ քահանայ մեծ. եւ ամ մնացորդք ժողովրդեանն ձայնի Տն Այ իւրեանց. զպատգամս անգեի մարգարէի. որպ առաքեաց զնա Տր Ած նոցա առ նս. եւ երկեաւ ժողովուրդն յերեսաց Տն: 13 * Եւ ասէ անգէոս հրեշտակ Տն ցժողովուրդն. ես ընդ ձեզ եմ ասէ Տր: 14 * Եւ զարթոյց Տր զոգի զօրաբաբելի որդւոյ սաղաթիելի յազգէ յուդայ. եւ զոգի յեսուայ յովսեդեկեայ քահանայի մեծի՝ եւ զոգի ամ մնացորդաց ժողովրդեանն. եւ մտանէին, եւ գործէին զգործ տան Տն ամենակալի Այ իւրեանց:

## Գլ: Բ:

1 'Ի քսան եւ 'ի չորս ամսոյն վեցերորդի: յամին երկրորդի դարեհի արքայի: 2 * Յամսեանն եօթներորդի. որ օր քսան եւ մի էր ամսոյն: խօսեցաւ Տր 'ի ձեռն անգեի մարգարէի՝ եւ ասէ: 3 * Ասա՛ ցզօրաբաբէլ սաղաթիելի յազգէ յուդայ՝ եւ ցյեսու յովսեդեկեայ քահանայի մեծի՝ եւ ցամ մնացորդս ժողովրդեանն: 4 * Ո՞ր 'ի ձէնջ տեսեալ է զտունս 'ի փառաւորութեան իւրում զառաջինն. եւ ո՞րպ արդ տեսանէք զդա իբրեւ զոչինչ առաջի ձեր: 5 * Եւ արդ՝ զօրացի՛ր դու զօրաբաբէլ՝ ասէ Տր. եւ զօրացի՛ր յեսու յովսեդեկեայ քահանայ մեծ. եւ զօրասցի ամ ժողովուրդ երկրիդ՝ ասէ Տր. եւ գործեցէք (զի ես ընդ ձեզ եմ ասէ Տր ամենակալ:) 6 * Եւ զբանն զոր ուխտեցի ընդ ձեզ՝ յելանել յերկրէն եգիպտացւոց: եւ հոգին իմ որ կայր 'ի միջի ձերում: քաջալերեցարուք: 7 * Զի այսպ ասէ Տր ամենակալ. || դարձեալ միւսանգամ շարժեցից զերկինս եւ զերկիր. եւ զծով եւ զցամաք: 8 * Եւ միանգամայն շարժեցից զամ ազգս. եւ եկեսցէ ընտիր ընտիր ընչից ամ ազգաց. եւ լցուցից զտունդ զայդ փառօք՝ ասէ Տր ամենակալ: 9 * Իմ է արծաթ՝ եւ իմ է ոսկի՝ ասէ Տր ամենակալ: 10 * Զի մեծ եղիցին փառք տանդ այդորիկ վերջինն քան զառաջինն՝ ասէ Տէր ամենակալ. եւ 'ի տեղւոջդ յայդմիկ տաց խաղաղութի ասէ Տր ամենակալ. եւ խաղաղութի ոգւոյ 'ի փրկութի ամի՝ որ գործիցէ յարուցանել զտաճարդ զայդ: 11 * 'Ի քսան եւ 'ի չորրորդի իններորդի ամսեանն. յամին երկրորդի դարեհի. եղեւ բան Տն առ անգէ մարգարէ՝ եւ ասէ: 12 * Այսպէս ասէ Տր ամենակալ. հարց օրէնս 'ի քահանայից՝ եւ ասասցես:

||2. Օրէ. 28. 38. Միք. 6. 15.

||Եբր. 12. 26.

*Եթէ

13 *Եթէ առնուցու մարդ սուրբ 'ի գրօշակ հանդերձի իւրոյ. և մերձեսցի ձորձ իւր 'ի հաց՝ կամ 'ի թան՝ կամ 'ի գինի՝ կամ յիւղ՝ կամ յամ կերակուրս՝ իցէ՞ թէ սրբեսցի։ պատասխանի ետուն քահանայքն, և ասեն. ոչ։ 14 *Եւ ասէ Անգէոս. եթէ մերձենայցէ պղծն՝ կամ անսուրբն ոգւով յամ ինչ յայսպիսեաց՝ իցէ՞ թէ պղծեսցի։ պատասխանի ետուն քահանայքն՝ և ասեն. պղծի։ 15 *Պատասխանի ետ Անգէոս՝ և ասէ. նոյնպէս և ժողովուրդս այս. նոյնպէս ազգս այս առաջի իմ ասէ Տր. նոյնպէս և ամ գործք ձեռաց դոցա. որ ինչ մերձենայցէ անդր, պղծեսցի։ Մն առիցն իւրեանց առաւօտնոց. մար մռքեսցին յերեսաց չարեաց իւրեանց. և ատէիք 'ի դրունս զյանդիմանիչսն։ 16 *Եւ արդ՝ դիք 'ի սիրտս ձեր յօրէ յայսմանէ՝ և յառաջ. մինչև եդեալ քար 'ի քարի վերայ տաճարին Տն։ 17 *Ով էիք՝ յորժամ արկանէիք յամանս ձեր քսան քոռ գարւոյ. և լինէր տասն քոռ գարւոյ. և մուծանէիք 'ի հնձանս ձեր հանել յիսուն մար. և լինէր քսան։ 18 *Հարի զձեզ անպտղութբ՝ և խոր֊շակաւ՝ և կարկտիւ՝ և զամ գործս ձեռաց ձերոց. և ոչ դարձայք առ իս՝ ասէ Տէր։ 19 *Կարգեցէք զսիրտս ձեր յօրէ յայսմանէ՝ և անդր. 'ի քսաներորդէ և 'ի չորրորդէ իններորդի ամսեանն. և յօրէ յայդմանէ՝ յորում անկաւ հիմն տաճարին Տն՝ դիք 'ի սիրտս ձեր։ 20 *Իցէ՝ եթէ յայտնեսցի ինչ 'ի վերայ կալոյ. և 'ի յորթ՝ և 'ի թզենի՝ և 'ի նռնենի՝ և 'ի փայտ ձիթոյ՝ որք պտուղ ոչ տային՝ յօրէ յայսմանէ օրհնեցից։ 21 *Եւ եղև բան Տն կրկին անգամ առ Անգէ մարգարէ 'ի քսան և 'ի չորս ամսոյն՝ և ասէ. 22 *Ասա ցզօրաբաբէլ սաղաթիէլի՝ յազգէ յուդայ. դարձեալ մի անգամ շարժեցից զերկինս և զերկիր. և զծով և զցամաք։ 23 *Եւ կործանեցից զզօրութիս թագաւորաց. և սատակեցից զզօրութիս թագաւորաց ազգաց. և կործանեցից զկառս՝ և զհեծեալս. և իջցեն երիվարք՝ և հեծեալք նց՝ իւրաքանչիւր սրով առ եղբայր իւր։ 24 *Յաւուր յայնմիկ ասէ Տր ամենակալ. առից զքեզ զօրաբաբէլ սաղաթիէլի ծառայ իմ. և եդից զքեզ իբրև զկնիք. զի ընդ քեզ հաճեցայ. ասէ Տր ամենակալ։

Ամովս. 4. 9. — Սիրաք. 49. 13.

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԶԱՔԱՐԻԱՅ։

Գլուխ Առաջին։

1 Յամսեանն ութերորդի՝ յամի երկրորդի դարեհի արքայի. եղև բան Տն առ զաքարիայ մարգարէ որդի բարաքեայ. որդւոյ ադդովայ՝ և ասէ։



2 ԱՐԿԱՑԱՒ ՏԷՐ Ի վր հարց ձերոց բարկութն մեծ։ 3 *Եւ ասասցես ցնս այսպէս ասէ Տր ամենակալ. դարձարուք առ իս՝ ասէ Տր զօրութեց. և դարձայց առ ձեզ՝ ասէ Տր զօրութեց։ 4 *Եւ մի լինիք իբրև զհարս ձեր. զորս պատուհասէին մարգարէքն առաջինք՝ և ասէին. այսպէս ասէ Տէր ամենակալ. դարձարուք յամ ճանապարհաց ձերոց չարաց՝ և 'ի գնացից ձերոց չարաց. և ոչ լուան՝ և ոչ անսացին լսել ինձ՝ ասէ Տր։ 5 *Հարքն ձեր ո՞ւր են՝ և մարգարէքն. միթէ յաւիտեան կեցին։ 6 *Բայց զբանս իմ՝ և զօրէնս իմ ընկալարուք՝ զորս ես պատուիրեմ հոգւով իմով ծառայից իմոց մարգարէից. որք ժամանեցին հարցն ձերոց։ պատասխանի ետուն՝ և ասեն. որպէս կարգեաց Տր ամենակալ առնել ըստ ճանապարհաց մերոց՝ և ըստ գնացից մերոց. նոյնպէս և արար մեզ։ 7 *'Ի քսաներորդի և 'ի չորրորդի մետասաներորդի ամսեանն. որ է ինքն արաց. յերկրորդի ամի դարեհի. եղև բան Տն առ զաքարիայ մարգարէ՝ բարաքեայ որդի ադդովայ՝ և ասէ։ 8 *Տեսի 'ի տեսլեան գիշերոյ. և ահա այր մի հեծեալ յաշխէտ ձի. և կայր 'ի մէջ երկուց անտառախիտ լերանց. և զկնի նր ձիք աշխէտք՝ և պիսակք՝ և սպիտակք։ 9 *Եւ ասեմ, զի՞նչ են դոքա Տր իմ. և ասէ ցիս հրեշտակն՝ որ խօսէր ցիս։ և ցուցից քեզ զինչ են դոքա։ 10 *Պատասխանի ետ այրն՝ որ կայր 'ի մէջ լերանցն՝ և ասէ ցիս. դոքա են՝ զորս առաքեաց Տր շրջել ընդ երկիր։ 11 *Պատասխանի ետուն հրեշտակին Տն՝ որ կայր 'ի մէջ լերանցն՝ և ասեն. շրջեցաք ընդ երկիր ամ. և ահա ամ երկիր բնակեալ և դադարեալ է։ 12 *Պատասխանի ետ հրեշտակն՝ և ասէ. Տր ամենակալ մինչև ցե՞րբ ոչ ողորմես

Մաղաք. 3. 7. — Եսայ. 21. 12. և 31. 6. և 45. 22. — Երեմ. 3. 12. — Եզեկ. 18. 30. և 20. 7. և 33. 11. — Ովսէ. 14. 2. — Յովէլ. 2. 12.

ցիս

ցիս 'ի վր̃ եդեմի, և քաղաքացն յուդայ.
զորս անտես արարեր՝ այս եօթանասուն
երորդ ամէ։ *Եւ պատասխանի ետ 13
Տր̃ ամենակալ հրեշտակին՝ որ խօսէր
ընդ իս բանս բարեաց՝ և բանս մխիթա-
րութե։ *Եւ ասէ ցիս հրեշտակն՝ որ 14
խօսէր յիս. աղաղակեա՛ և ասա՛։ այսպէս
ասէ Տր̃ ամենակալ՝ ‖նախանձեցայ վս̃
եդեմի և վասն սիոնի նախանձ մեծ։

‖Մ. ագր. 8. 2.

*Եւ բարկութի մեծաւ բարկացեալ 15
եմ 'ի վերայ ազգացն՝ որք միանգամայն
հարեալ են 'ի վր̃ նց̃. փոխանակ զի ես
սակաւիկ ինչ բարկացեալ էի. նոքա
միանգամայն հարան 'ի վր̃ 'ի չարիս։
*Վն̃ այնորիկ այսպէս ասէ Տր̃. դար- 16
ձայց առ եդեմ գթութի. և տունս իմ
վերստին շինեսցի՝ ասէ Տր̃ ամենակալ.
և չափ ձգեսցի միւսանգամ 'ի վր̃ եդեմի։
*Եւ ասէր ցիս հրեշտակն՝ որ խօսէր 17
յիս. աղաղակեա՛ և ասա՛։ այսպէս ասէ Տր̃
ամենակալ. դարձեալ վեղցին քաղաքք
բարութի. և ողորմեսցի Տր̃ սիոնի. և
հաճեսցի միւսանգամ ը̃ եդեմ։ *Եւ 18
ամբարձի զաչս իմ՝ և տեսի. և ահա
չորք եղջիւրք։ *Եւ ասեմ ցհրեշտակն՝ 19
որ խօսէր յիս. զի՞նչ են այդքիկ Տր̃.
և ասէ ցիս՝ այդ եղջիւրք են՝ որք ցրուե-
ցին զյուդայ՝ և զիէլ։ *Եւ եցոյց 20
ինձ Տր̃ չորս հիւսունս։ *Եւ ասեմ. 21
իսկ դոքա զի՞նչ գան գործել. ասէ՝ այդ
եղջիւրք են՝ որք ցրուեցին զյուդայ՝ և
զիէլ խորտակեցին. և ոչ՛ք 'ի նոցա-
նէն ամբարձ զգլուխ իւր. և ելին սո-
քա ցրել զնոսա 'ի ձեռս նոցա. զչորս
եղջիւրս զայսոսիկ յարուցեալս՝ եղ-
ջիւր 'ի վերայ երկրի Տն̃ ցրել զնոսա։

## Գլ: Բ:

Եւ ամբարձի զաչս իմ՝ և տեսի՝ և ահա 1
այր՝ և 'ի ձեռին իւրում ունէր
լար երկրաչափ։ *Եւ ասեմ ցնա՝ յո՞ւր 2
երթաս. և ասէ ցիս՝ չափել զեդեմ. և
տեսանել թէ որչափ է լայնութի նր̃՝
և որչափ երկայնութի։ *Եւ ահա հրեշ- 3
տակն՝ որ խօսէր յիս, զտեղի առեալ
կայր. և այլ հրեշտակ ելանէր ը̃ առաջ
նր̃։ *Եւ ասէ ցնա. ընթա՛, և խօսեա՛ց 4
ընդ երիտասարդին ընդ այնմիկ՝ և ա-
սասցես. պտղալից շինեսցի եդեմ 'ի բազ-
մութէ մարդոյ և անասնոյ 'ի մէջ նր̃։
*Եւ ես եղէց նմա պարիսպ հրեղէն 5
շուրջանակի։ և 'ի փառս բնակեցայց 'ի
միջի նորա։ *Ո՛վ, ո՛, փախերո՛ւք յերե- 6
սաց հիւսիսոյ՝ ասէ Տէր. զի 'ի չորից
հողմոց երկնից ժողովեցից զձեզ՝ ասէ
Տր̃։ *'Ի սիոն դիմեալ ապրեցարո՛ւք 7
բնակիչք դստեր բաբելոնի։ *Զի 8
այսպէս ասէ Տր̃ ամենակալ. զփառաց
զկնի արձակեաց զիս յազգսն՝ որք կո-
ղոպտեցին զձեզ։ զի որ մերձենայն 'ի
ձեզ՝ ոպ̃ որ ընդ հարկանիցէ ընդ բիբ
ական իւրոյ։ *Զի ահաւասիկ ես ա- 9
ծից զձեռն իմ 'ի վր̃ նոցա. և եղիցին
յաւար ծառայեցուցիչքն նց̃։ և ծանի-
ջի՛ք՝ թէ Տր̃ ամենակալ առաքեաց զիս
*Խնդա՛ և ուրա՛խ լեր դուստր սիոնի. 10
զի ահա ես եկից, և բնակեցայց 'ի միջի
քում՝ ասէ Տր̃։ *Եւ ապաւինեսցին 11
ազգք բազումք 'ի Տր̃ յաւուր յայնմիկ՝
եղիցին նմա ժողովուրդք. և բնակիցեն
'ի միջի քում. և ծանիցես՝ թէ Տր̃ Ած̃
ամենակալ առաքեաց զիս առ քեզ։
*Եւ ժառանգեսցէ Տր̃ զյուդայ զբա- 12
ժին իւր յերկրին սրբութե. և հաճես-
ցի միւսանգամ ընդ եդեմ։ *Եւ երկի- 13
ցէ ա̃մ մարմին յերեսաց Տն̃. զի զար-
թուցեալ է յամպոց սրբոց իւրոց։

## Գլ: Գ:

Եւ եցոյց ինձ Տր̃ զյեսու քահանայ 1
մեծ՝ զի կայր առաջի հրեշտակին
Տն̃։ և սատանայ կայր ընդաջմէ նորա
հակառակիլ ընդ նմա։ *Եւ ասէ Տր̃ 2
ցսատանայ. սաստեսցէ Տր̃ 'ի քեզ սա-
տանայ. և սաստեսցէ Տր̃ 'ի քեզ՝ որ ընտ-
րեացն զեդեմ։ ո՞չ ապաքէն դա աւադիկ
իբրև զխանձող մի զերծեալ 'ի հրոյ։
*Եւ յեսու էր զգեցեալ հանդերձս 3
աղտեղիս. և կայր առաջի հրեշտակին
Տն̃։ *Պատասխանի ետ՝ և ասէ ցայնո- 4
սիկ՝ որք կային առաջի նր̃. 'ի բա՛ց արա-
րէք զհանդերձս աղտեղիս 'ի նմանէ։
և ասէ ցնա, ահա բարձի 'ի քէն զանօ-
րէնութիս քո. և ագուցէք դմա պճղը
նաւոր։ *Եւ դի՛ք խոյր ս̃բ 'ի գլուխ 5
դորա։ և եդին խոյր ս̃բ 'ի գլուխ նորա.
և զգեցուցին նմա հանդերձս։ և հրեշ-
տակն Տն̃ կայր։ *Եւ դնէր վկայուի 6
հրեշտակն Տն̃ ընդ յեսուայ՝ և ասէր։
*Այսպէս ասէ Տէր ամենակալ. եթէ 7
'ի ճանապարհս իմ գնասցես. և զհրա-
մանս իմ պահեսցես. դու դատեսցես
զտուն իմ. և եթէ պահեսցես ըզ-
սրահս իմ, տաց քեզ՝ որք շրջիցին 'ի
մէջ դոցա՝ որք կանդ աւադիկ։
*Լուա՛յց լո՛ւր յեսու քահանայ մեծ՝ դու 8
և մերձաւորք քո՝ որք նստին առաջի
քո. զի արք հրաշադէտք կիսահմայք
են։ զի ահաւասիկ ‖ես ածեմ զծառայ
իմ զծագումն։ *Զի վէմն՝ զոր ետու 9
առաջի երեսաց յեսուայ. 'ի վր̃ վիմին
եօթն աչք են։ ահաւասիկ ես փորե-
ցից զխորխորատ՝ ասէ Տր̃ ամենակալ.
և շօշափեցից զա̃մ անօրէնութի երկ-
րին այնորիկ յաւուր միում։ *Յաւուր 10
յայնմիկ ասէ Տէր ամենակալ. կոչես-
ջիք

ջիք ամենեքեան զընկեր իւր ընդ որթով և ընդ թզենեաւ:

## ԳԼ: Դ:

1 Եւ դարձաւ հրեշտակն՝ որ խօսէր ցիս. և զարթոյց զիս՝ զօրօրինակ յորժամ զարթնուցու այր 'ի քնոյ իւրմէ: 2 *Եւ ասէ ցիս՝ զի՞նչ տեսանես դու: և ասեմ, տեսանեմ՝ ահա աշտանակ ոսկի ձոյլ. և գունտ 'ի վր նր. և եօթն ճրագ 'ի վր նր. և եօթն բերանք ճրագացն՝ որք 'ի վր նր: 3 *Եւ երկու ձիթենիք 'ի վր նորա. մի ընդ աջմէ գնտին լուցելոյ. և մի ընդ ահեկէ: 4 *Հարցի, և ասեմ՝ ցհրեշտակն՝ որ խօսէր ցիս. զի՞նչ են այդոքիկ Տր: 5 *Պատասխանի ետ հրեշտակն՝ որ խօսէր ցիս՝ և ասէ ցիս: ո՞չ գիտես զի՞նչ են այդոքիկ: և ասեմ, ո՛չ Տր: 6 *Պատասխանի ետ՝ և ասէ ցիս: այս բան Տն է առ զօրաբաբէլ: ասէ, ո՛չ զօրութեամբ մեծաւ՝ և ո՛չ ուժգնութեամբ. այլ հոգւով իմով ասէ Տէր ամենակալ: 7 *Ո՞վ ես դու լեառն մեծ կանգնեալ առաջի զօրաբաբելի: և հանից զվէմ ժառանգութեան. զհաւասարութեան շնորհացն շնորհել նմա: 8 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ: 9 *Ձեռք զօրաբաբելի զհիմն արկին տանդ այդմիկ. և ձեռք նր կանգնեսցեն զդա. և ծանիցես՝ թէ Տէր ամենակալ առաքեաց զիս առ քեզ: 10 *Քանզի՞ ո՞վ է. որ անգոսնեաց զաւուրս փոքունս՝ և խնդասցեն, և տեսցեն զվէմն անագեայ 'ի ձեռին զօրաբաբելի: այս են եօթն աչքն՝ որք հային ընդ ամ երկիր: 11 *Պատասխանի ետու, և ասեմ ցնա. իսկ զի՞նչ են երկու ձիթենիքն՝ որք կան ընդ աջմէ և ընդ ահեկէ աշտանակին: 12 *Եւ հարցի կրկին՝ և ասեմ ցնա. զի՞նչ երկու ոստք ձիթենեացն՝ որք 'ի ձեռս երկուց ճրագարաներանացն ոսկեաց որ կանթեղեաց. և 'ի վր հանելեաց զճաշակսն ոսկիս: 13 *Եւ ասէ ցիս. ո՞չ գիտես զի՞նչ են այդոքիկ. և ասեմ, ո՛չ Տր: Եւ ասէ ցիս. դոքա են որդիք պարարտութեան՝ որք կան առաջի Տն ամ երկրի:

## ԳԼ: Ե:

1 Եւ դարձայ, ամբարձի զաչս իմ, և տեսի. և ահա գերանդի թռուցեալ: 2 *Եւ ասէ ցիս՝ զի՞նչ տեսանես. և ասեմ, զգերանդի թռուցեալ տեսանեմ ես. քսան կանգուն յերկայնութիւն և տասն կանգուն 'ի լայնութիւն: 3 *Եւ ասէ ցիս. այդ են անէծք՝ որք ելանեն 'ի վր երեսաց ամ երկրի. զի ամ գողդ՝ վրէժ մահուչափ 'ի դմանէ խնդրեսցի. և ամ ստերդմամն վրէժ մահու

Ճժ

4 չափ դոլաւ խնդրեսցի: *Եւ հանից զդա՝ ասէ Տր ամենակալ. և մտցէ 'ի տուն գողոյ. և 'ի տուն որք երդնուցուն սուտ յանուն իմ. և բնակեսցի 'ի մէջ տան նորա՝ և վախճանեսցէ զնա. և զփայտ նր՝ և զքարինս նորա: 5 *Եւ ել հրեշտակն՝ որ խօսէր յիս. և ասէ ցիս, հայեաց աչօք քովք՝ և տես զայն, որ ելանէ: 6 *Եւ ասեմ՝ զի՞նչ է. և ասէ ցիս. այդ է չափ՝ որ ելանէ. և ասէ՝ այդ է անիրաւութիւն նոցա ընդ ամ երկիր: 7 *Եւ ահա կշիռ մի կապարեայ ամբարձեալ. և կին մի նստէր 'ի մէջ չափուն: 8 *Եւ ասէ՝ այդ է անիրաւութիւն. և ընկէց զնա 'ի մէջ չափուն. և ընկէց զվէմն կապարեայ 'ի բերան նր: 9 *Եւ ամբարձի զաչս իմ, և տեսի. և ահա երկու կանայք ելանէին, և հողմ 'ի թևս նց: և էին թևք նց իբրև զթևս յոպոպոյ. և ամբարձին զչափն ընդ երկիր և ընդ երկինս: 10 *Եւ ասեմ ցհրեշտակն՝ որ խօսէր յիս. յո՞ տանին նոքա զչափն: 11 *Եւ ասէ ցիս՝ շինել նմա տուն յերկրին բաբելացւոց՝ և պատրաստել. և դիցեն զնա անդ 'ի վերայ պատրաստութեան իւրոյ:

## ԳԼ: Զ:

1 Դարձայ՝ և ամբարձի զաչս իմ՝ և տեսանէի. և ահա չորք կառք ելանէին 'ի միջոյ երկուց լերանց. և լերինքն էին լերինք պղնձիք: 2 *'Ի կառսն առաջինս ձիք աշխէտք. և 'ի կառսն 3 երկրորդս ձիք սեաւք: *Եւ 'ի կառսն երրորդս ձիք սպիտակք. և 'ի կառս չորրորդս ձիք պէսպէս պխակք: 4 *Պատասխանի ետու. և ասեմ ցհրեշտակն՝ որ խօսէր յիս. զի՞նչ են այդոքիկ Տր: 5 *Պատասխանի ետ հրեշտակն՝ որ խօսէր յիս՝ և ասէ: դոքա են չորք հողմք երկնից՝ որք ելանեն կալ առաջի Տն ամ երկրի: 6 *Յորում էին ձիք սեաւք. ելանէին ընդ երկիր հիւսիսոյ. և սպիտակքն ելանէին զհետ նոցա. և աշխէտքն ելանէին ը երկիր հարաւոյ: 7 *Եւ պխակքն ելանէին, հայէին շրջել ընդ ամ երկիր: և ասէ. գնացէք և շրջեցարո՛ւք ընդ երկիր. և շրջեցան ընդ երկիր: 8 *Եւ աղաղակեաց՝ և ասէ ցիս. ահա որք ելանեն ընդ երկիր հիւսիսոյ, հանգուցին զբարկութիւն իմ յերկրին հիւսիսոյ: 9 *Եւ եղև բան Տն առ իս՝ և ասէ: 10 *Ա՛ռ դու ինձ 'ի գերութենէ անտի յիշխանաց՝ և 'ի պիտանեաց նր՝ և 'ի գիտնոց նորա: և մտցես յաւուր յայնմիկ 'ի տուն յօսիայ որդւոյ սոփոնիայ՝ որ եկեալ է 'ի բաբելոնէ: 11 *Եւ առցես ոսկի՝ և արծաթ. և արաս

ցես պսակս՝ եւ դիցես 'ի գլուխ յեսուայ յովսեդեկեայ քահանայի մեծի. *12 Եւ ասասցես ցնա. այսպէս ասէ Տր ամենակալ՝ ‖ահա այր՝ եւ ծագումն անուն նորա. եւ 'ի ներքոյ իւրմէ ծագեսցէ. եւ շինեսցէ զտուն Տն. *13 Եւ նա առցէ զքաջութիւն. նստցի՝ եւ տիրեսցէ 'ի վր աթոռոյ իւրոյ. եւ եղիցի քահանայ ընդ աջմէ նր. եւ խորհուրդ խաղաղութե եղիցի 'ի մէջ երկոցունց. *14 Եւ պսակդ եղիցի այնոցիկ՝ որք ակն ունին. եւ պիտանեաց նորա. եւ որոց ճանաչեն զնա 'ի շնորհս որդւոյ սոփոնիայ. եւ յերգս տան Տն. *15 Եւ հեռաւորքն 'ի նոցանէն եկեսցեն՝ եւ շինեսցեն զտուն Տն. եւ ծանիջիք թէ Տէր ամենակալ առաքեաց զիս առ ձեզ. եւ եղիցի թէ լսելով լուիջիք ձայնի Տն Այ ձերոյ.

‖ Ղուկ. 1. 78.

պսակքդ եղիցին հեղենմայ. եւ տօբեայ եւ իդայ. եւ հենմայ. որդւոյ սոփոնեայ.

## ԳԼ. Է.

1 Եւ եղեւ յամին չորրորդի դարեհի արքայի, եւ եղեւ բան Տն առ զաքարիայ. որ օր չորք էին ամսոյն իններորդի՝ որ է քասղեւ. *2 Եւ առաքեաց 'ի բեթելայ. սարասար՝ եւ արբեսայ՝ թագաւորք եւ արք իւրն՝ աղաչել զՏր. *3 Եւ ասել ցքահանայսն՝ որք էին 'ի տան Տն ամենակալի՝ եւ ցմարգարէսն. թէ եմուտ այդր յամսեանն հինգերորդի սրբութիւն. քանզի առնէին զայն զամս բազումս. *4 Եւ եղեւ բան Տն զօրութեանց առ իս՝ եւ ասէ. *5 Խօսեաց ընդ ժողովրդեանդ երկրիդ՝ եւ ընդ քահանայս՝ եւ ասասցես. ‖եթէ պահիցէք՝ եւ կոծիցէք՝ 'ի հինգերորդս կամ յեօթներորդս ամսոյ. ահա եօթանասուն ամ. միթէ պահս պահիցէք ինձ. *6 Եւ եթէ ուտէք՝ եւ ըմպէք. ոչ ապաքէն դուք ուտէք՝ եւ ըմպէք. *7 Ոչ այս բանք են՝ զոր խօսեցաւ Տր 'ի ձեռն մարգարէից իւրոց առաջնոց՝ մինչդեռ չէն էր երեմ, եւ 'ի բարութե. եւ քաղաքք նր շուրջանակի. եւ լեռնայինքն եւ դաշտայինքն բնակեալ էին. *8 Եւ եղեւ բան Տն առ զաքարիայ՝ եւ ասէ. *9 Այսպէս ասէ Տր ամենակալ. դատաստան արդար դատեցարուք. եւ զողորմութի եւ զգթութիւն արարէք իւրաքանչիւր եղբօր իւրոյ. *10 ‖Զայրին՝ եւ զորբն՝ եւ զպանդուխտն՝ եւ զտնանկն մի յաղթահարէք. եւ ոխս չարեաց ընկերի իւրոյ՝ մի ոք կալցի 'ի սիրտս իւր. *11 Եւ ոչ հաւանեցան անսալ. այլ ետուն զթիկունս իւրեանց 'ի յիմարութի. եւ ծանրացուցին զականջս իւրեանց առ 'ի չլսելոյ. *12 Եւ զսիրտս իւրեանց կարգեցին անհնազանդս առ 'ի չլսելոյ օրինաց իմոց՝ եւ բանից զոր առաքեաց Տր ամենակալ հոգւով իւրով 'ի ձեռն մարգարէից առաջնոց. եւ եղեւ բարկութի մեծ 'ի Տնէ ամենակալէ. *13 Եւ եղիցի զոր օրինակ խօսեցան՝ եւ ոչ լուան նմա. նոյնպէս աղաղակեսցեն՝ եւ ոչ լուիցէ նց. ասէ Տր ամենակալ. *14 Եւ հանից զնս ընդ ամ ազգս՝ զորս ոչ գիտիցեն. եւ երկիրդ ապականեսցի զկնի նոցա, զի ոչոք իցէ՝ որ եւանիցէ՝ եւ դառնայցէ. եւ եդին զերկիրն յապականութի.

‖ Եսայ. 58. 5.

պահեցէք

‖ Եզեկ. 22. 22. Եսայ. 1. 23. Երեմ. 5. 28.

## ԳԼ. Ը.

1 Եւ եղեւ բան Տն ամենակալի առ իս. *2 Եւ ասէ Տր ամենակալ. նախանձեցայ ընդ երեմի՝ եւ ընդ սիոնի նախանձ մեծ. եւ բարկութբ մեծաւ նախանձեցայ ընդ նորա. *3 Այսպէս ասէ Տր. դարձայց 'ի սիոն՝ եւ բնակեցայց 'ի մէջ երեմի. եւ կոչեսցի երեմ քաղաք ճշմարիտ. եւ լեառն Տն ամենակալի՝ լեառն սբ. *4 Այսպէս ասէ Տր ամենակալ. դարձեալ նստցին ծերք եւ պառաւունք 'ի հրապարակս երեմի. իւրաքանչիւր ցուպ 'ի ձեռին իւրում 'ի բազմութէ աւուրց. *5 Եւ հրապարակք քաղաքին լցցին պատանեկօք՝ եւ աղջկամբք՝ որք խաղայցեն 'ի հրապարակս նր. *6 Այսպէս ասէ Տէր ամենակալ. եթէ տկարանայցէ ինչ առաջի մնացորդաց ժողովրդեանդ այդորիկ յաւուրս յայնոսիկ. միթէ եւ առաջի իմ տկարանայցէ, ասէ Տր ամենակալ. *7 Այսպէս ասէ Տր ամենակալ՝ ահաւասիկ ես փրկեմ զժողովուրդ իմ յերկրէ արեւելից՝ եւ յերկրէ արեւմտից. *8 Եւ ածից զնոսա՝ եւ բնակեցուցից 'ի մէջ երեմի. եւ եղիցին ինձ ժողովուրդ. եւ ես եղէց նց Աստուած ճշմարտութբ՝ եւ արդարութբ. *9 Այսպէս ասէ Տր ամենակալ. զօրասցին ձեռք ձեր՝ որք լսէք յաւուրս յայսոսիկ 'ի բերանոյ մարգարէիցն. յօրէ՝ յորմէ արկիք զհիմն տան Տն ամենակալի. եւ տաճարս յորմէ հետէ շինեցաւ. *10 Զի յառաջ քան զաւուրսն զայնոսիկ՝ վարձք մարդկան ոչ էին յօգուտ. եւ վարձք անասնոց ոչ էին յարդի. եւ ելողի եւ մտողի ոչ էր խաղաղութի 'ի նեղութէ. եւ առաքեցից զամ մարդիկ իւրաքանչիւր առ ընկեր իւր. *11 Եւ արդ՝ ոչ ըստ աւուրցն առաջնոց առնեմ ես մնացորդաց ժողովրդեանդ այդորիկ՝ ասէ Տր ամենակալ. *12 Այլ ցուցից խաղաղութի. այգի տացէ զպտուղ իւր՝ եւ երկիր տացէ զարմտիս իւր. եւ երկինք տացեն զցօղ իւրեանց. եւ ժառանգեցուցից մնացորդաց ժողովրդեանդ իմոյ զայս ամ. *13 Եւ եղիցի, որպէս եւէիք յանէծս 'ի մէջ ազգաց տունդ յուդայ՝ եւ տունդ Իէլի. նոյնպէս ես ապրեցուցից զձեզ՝ եւ եղիջիք յօրհնութի.

քա-

քաջալերեցարո՛ւք՝ և զօրասցին ձեռք ձեր։ 14 *Զի այսպէս ասէ Տր̃ ամենակալ. որպէս խորհեցայ չարչարել զձեզ 'ի բարկացուցանել զիս հարցն ձերոց, ասէ Տր̃ ամենակալ, 15 *Եւ ոչ զղջացայ. նոյնպէս պատրաստեալ և խորհեալ եմ յաւուրս յայսոսիկ՝ բարի առնել եմ̃ի՝ և տանդ յուդայ. քաջալերեցարո՛ւք։ 16 *Այս բանք են՝ զորս առնիցէք. Խօսեցարո՛ւք զճշմարտութի̃ իւրաքանչիւր ը̃ ընկերի իւրում։ և դատաստան խաղաղութե̃ և արդար դատեցարո՛ւք 'ի դրունս ձեր։ 17 *Եւ իւրաքանչիւր չար ընկերի իւրում մի՛ խորհիք 'ի սիրտս ձեր. և զերդումն սուտ մի՛ սիրէք. զի զայն ա̃մ ատեցի՝ ասէ Տէր ամենակալ։ 18 *Եւ եղև բան Տն̃ ամենակալի առ իս՝ և ասէ։ 19 *Այսպէս ասէ Տր̃ ամենակալ՝ պահքն չորրորդք՝ և պահքն հինգերորդք՝ և պահքն եօթներորդք՝ և պահքն տասներորդք՝ եղիցին տանդ յուդայ 'ի խնդութի̃՝ և յուրախութի̃ և 'ի տօնս բարութեց. և ուրախ եղիջիք. և զճշմարտութի̃ և զխաղաղութի̃ սիրեցէ՛ք։ 20 *Այսպէս ասէ Տր̃ ամենակալ. դարձեալ եկեսցեն ժողովուրդք բազումք՝ և բնակիչք քաղաքաց բազմաց։ 21 *Եւ ժողովեսցին բնակիչք միոյ 'ի միւս քաղաք՝ և ասասցեն. երթիցուք աղաչել զերեսս Տն̃՝ և խնդրել զերեսս Ա̃յ ամենակալի՝ երթայց և ես։ 22 *Եւ եկեսցեն ժողովուրդք բազումք խնդրել զերեսս Տն̃ ամենակալի յեմ̃. և հաշտեցուցանել զերեսս Տն̃։ 23 *Այսպէս ասէ Տր̃ ամենակալ. յաւուրս յայնոսիկ եթէ բուռն հարկանիցեն արք տասն յա̃մ լեզուաց ազգաց. բուռն հարկանիցեն զդրօշակէ առն հրէի, և ասասցեն. երթիցուք մեք ը̃ քեզ՝ զի լուաք թէ Ա̃ծ ընդ քեզ է։

## Գլ: Թ.

1 Առած բանի Տն̃ յերկիր սեդրաք. և դամասկոսի զոհ նր̃. զի Տր̃ տեսանէ զմարդիկ՝ և զա̃մ ազգս իւ̃ի։ 2 *Եւ յեմաթ 'ի սահմանս նր̃. տիւրոս՝ և սիդոն՝ զի արհամարհեցին յոյժ։ 3 *Եւ շինեաց տիւրոս զամուրս իւր. և գանձեաց զարծաթ իբրև զհող. և զոսկի իբրև զկաւ ճանապարհաց։ 4 *Վասն այնորիկ Տր̃ ժառանգեսցէ զնա. և անկցէ 'ի ծով զզօրութի̃ նր̃. և նա հրով ծախեսցի։ 5 *Տեսցէ ասկաղոն՝ և երկիցէ. և գազայ մորմոքեսցի յոյժ. և ակկարոն, զի յամօթ եղև 'ի վերայ յանցանաց իւրոց։ և կորիցէ թագաւոր 'ի գազայ։ և ասկաղոն մի՛ բնակեսցի։ 6 *Եւ բնակեսցին այլազգիք յազովտոս. և քակեցից զհպարտութի̃ այլ-



7 ազգեաց։ *Եւ բարձից զարիւն նց̃ 'ի բերանոյ նց̃. և զգարշելիս նց̃ 'ի միջոյ ատամանց նոցա. և մնասցեն և նոքա Ա̃յ մերում. և եղիցին իբրև հազարապետ 'ի մէջ յուդայ. և ակկարոն իբրև յեբուսացին։ 8 *Եւ կացուցից տան իմոյ պաշտպան առ 'ի չանցուցանելոյ՝ և չդառնալոյ. և մի՛ եկեսցէ 'ի վր̃ նց̃՝ որ հալածեսցէ զնս̃։ զի այժմ տեսի աչօք իմովք։ 9 *Ուրախ լեր յոյժ դուստր սիոնի. քարոզեա՛ դուստր եմ̃ի. ահա թագաւոր քո գայ առ քեզ. արդար, և փրկիչ. նոյն հեզ՝ և հեծեալ 'ի վր̃ իշոյ՝ և յաւանակի նորոյ։ 10 *Սատակեսցէ զկառս յեփրեմէ՝ և զերիվար յեմ̃է. և խորտակեսցի աղեղն պատերազմողի. և բազմութի̃՝ և խաղաղութի̃ յազգաց. և տիրեսցէ ջուրց 'ի ծովէ մինչև 'ի ծով. և 'ի գետոց մինչև 'ի ծագս երկրի։ 11 *Եւ դու արեամբ ուխտի քոյ արձակեցեր զկապեալս քո յանջրդի գբոյ։ 12 *Եւ նստջիք յամուրս կապեալք ժողովրդեան. և փոխանակ միոյ աւուր պանդխտութե̃ քոյ՝ կրկին հատուցից քեզ։ 13 *Զի լարեցի զքեզ ինձ յուդայ իբրև զաղեղն. լցի և զեփրեմ։ և զարթուցից զորդիս քո սիոն 'ի վր̃ որդւոցն յունաց։ և շօշափեցից զքեզ իբրև զսուսեր պատերազմողի։ 14 *Եւ Տր̃ եղիցի վերակացու նց̃. և ելցէ իբրև զփայլակն նետ նր̃. և Տր̃ Տր̃ ամենակալ փող հարցէ. և գնասցէ շարժմամբ սպառնալեաց իւրոյ։ 15 *Տր̃ ամենակալ պաշտպանեսցէ նց̃. և սպառեսցեն զնոսա։ և թաղեսցեն զնոսա քարամբք պարսաքարաց։ և արբցեն զարիւն նց̃ իբրև զգինի. և լցցեն զտաշտս իբրև զսեղանն։ 16 *Եւ փրկեսցէ զնս̃ Տր̃ Ա̃ծ նց̃ յաւուր յայնմիկ՝ իբրև զոչխարս զժողովուրդ իւր։ զի քարինք սրբք թաւալին յերկրի նր̃։ 17 *Զի որինչ բարին իցէ՝ նր̃ է. և որինչ լաւն նորին։ ցորեան երիտասարդաց. և գինի անուշարար կուսից։

## Գլ: Ժ.

1 Խնդրեցէ՛ք 'ի Տէ̃ անձրև ըստ ժամանակաց. զկանուխ և զանագան. Տէր արար զզարմանալիս՝ և զանձրև ձմերայնոյ։ տացէ նոցա իւրաքանչիւր խոտ յանդի։ 2 *Զի հարցուկք բարբառեցան աշխատութի̃ս. և ըղձապատումս տեսիլս սուտս և երազս սուտս խօսէին. զուր մխիթարէին. վա̃ այնորիկ ցամաքեցան իբրև խաշինք. և չարադնեցան. զի ոչ գոյր բժշկութի̃։ 3 *'Ի վր̃ հովուաց բարկացաւ սրտմտութի̃ իմ. և 'ի վր̃ գառանց զայցելութի̃ արարից. և այց ա-

Եսայ. 62.11. Մատ. 21. 5.

և Տր̃ Ա̃ծ

րասցէ Տր̄ Ա̄ծ ամենակալ խաշին իւրոյ տանն յուդայ. և յարդարեսցէ զն̄ա իբր իբրև զերիվար գեղեցիկ պատերազմի։ 4 *Եւ 'ի նմանէ դիտեաց. և 'ի նմանէ յարդարեաց. և 'ի նմանէ աղեղն իւր բարկութ̄. և 'ի նմանէ ելցէ ա̄մ որ հալածիցէ 'ի նոյն։ 5 *Եւ եղիցին իբրև զպատերազմօղք՝ որք կոխիցեն զկաւ 'ի ճանապարհս պատերազմի։ և ճակատեսցին. զի Տր̄ ընդ նո̄ա է։ և ամաչեսցեն հեծեալք յերիվարս։ 6 *Եւ զօրացուցից զտունն յուդայ. և զտունն յովսեփայ ապրեցուցից՝ և բնակեցուցից զն̄ա. զի սիրեցի զն̄ա. և եղիցին որպ̄ թէ ոչ իցեմ դարձեալ 'ի նց̄նէ. զի ես եմ Տր̄ Ա̄ծ նց̄. և լուայց նց̄։ 7 *Եւ եղիցին իբրև զպատերազմօղսն եփրեմի։ և խնդասցէ սիրտ նց̄ իբրև 'ի գինւոյ. և որդիք նց̄ տեսցեն, և ուրախ լիցին. և ցնծասցեն սիրտք նց̄ 'ի Տր̄։ 8 *Ա̄զդ արարից նց̄՝ և ընկալայց զն̄ա. զի ապրեցուցից զն̄ա՝ և բազմասցին. որպ̄ էին բազումք։ 9 *Եւ սերմանեցից զն̄ա ընդ ազգս. և որք հեռաւորքն իցեն՝ յիշեսցեն զիս. սնուսցեն զորդիս իւրեանց՝ և դարձցին։ 10 *Եւ դարձուցից զն̄ա յերկրէն եգիպտացւոց. և յասորեստանեայց ընկալայց զն̄ա. և 'ի գաղայադ և 'ի լիբանան մուծից զն̄ա. և ոչ պակասեսցի 'ի նոցանէ՝ և ոչ մի։ 11 *Եւ անցցեն ընդ ծովն անձուկ. և հարցեն զալիս ծովուն. և ցամաքեսցին ա̄մ խորք գետոց. և բարձցի ա̄մ հպարտութ̄ի ասորեստանեայց՝ և իշխանութ̄ի եգիպտացւոց քակեսցի։ 12 *Եւ զօրացուցից զն̄ա 'ի Տր̄ Ա̄ծ նոցա. և յանուն նորա պարծեսցին՝ ասէ Տր̄։

և 'ի նմա-նէ աղեղն պատե-րազմի

## Գլ. ԺԱ։

Բա̄ց զդրունս քո լիբանան. և կերիցէ հուր զմայրս քո։ 2 *Ողբասջի՛ք սարոյք՝ զի մայրք գլորեցան. զի մեծապէս մեծամեծք չքնաղացան. ողբասջի՛ք կաղնիք բասանու. զի քանդեցաւ անտառն տնկախիտ։ 3 *Ձայն ողբալոյ հովուաց՝ զի թշուառացաւ մեծութի̄ նց̄. ձայն գոչելոյ առիւծուց. զի թշուառացաւ բարձրութի̄ն յորդանանու։ 4 *Ա̄յսպէս ասէ Տր̄ ամենակալ. արածեա՛ զխաշինս կոտորածի։ 5 *Զոր ստացօղքն կոտորէին. որք վաճառէին զն̄ա՝ և ասէին. օրհնեալ Տր̄՝ և մեծացաք. և հովուաց նց̄ ոչինչ ցաւէր վ̄ն նց̄։ 6 *Վ̄ա յայսորիկ ոչ ևս խնայեցից 'ի վ̄ր բնակչաց երկրիդ՝ ասէ Տր̄։ և ահաւասիկ ես մատնեցից զմարդիկ իւրաքանչիւր 'ի ձեռս ընկերի իւրոյ. և հարցեն, և ոչ փրկեցից 'ի ձեռաց նց̄։ 7 *Եւ հովուեցից զխաշինն կոտորելոյ յերկրին քանանացւոց։ և առից ինձ երկուս գաւազանս՝ զմինն կոչեցից գեղեցկութի̄. և զերկրորդն կոչեցից վիճակ՝ և արածեցից զխաշինս։ 8 *Եւ բարձից զերիս հովիւսն 'ի միում ամսեան. և ծանրասցի անձն իմ 'ի վ̄ր նց̄. քանզի և անձինք նց̄ գոչէին 'ի վ̄ր իմ։ 9 *Եւ ասեմ ոչ հովուեցից զձեզ. որ մեռանելոցն է՝ մեռցի, և որ սատակելոցն է, սատակեսցի. և մնացեալք կերիցեն իւրաքանչիւր զմարմինս ընկերի իւրոյ։ 10 *Եւ առի զգաւազանն իմ զգեղեցիկ՝ և ընկեցի զնա. ցրել զուխտ իմ՝ զոր եդի առ ա̄մ ժողովուրդս։ 11 *Եւ ցրեսցի յաւուր յայնմիկ։ և ծանիցեն քանանացիքն զխաշինս պահեստի իմոյ. զի բան Տն̄ է։ 12 *Եւ ասացի ցն̄ա, թէ բարւոք թուի յաչս ձեր. տո՛ւք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զրո՛յց արարէք։ *‖Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի։ 13 Եւ ասէ ցիս Տր̄՝ արկ դու զայդ 'ի բովս. և քննեա՛ թէ փորձ իցէ՝ որպ̄ ես գտայ փորձ վ̄ն նց̄։ և առի զերեսուն արծաթին. և արկի 'ի տուն Տն̄ 'ի բովս։ 14 *Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ զվիճակն. ցրել զուխտ իմ՝ 'ի մէջ յուդայ և 'ի մէջ իէլի։ 15 *Եւ ասէ ցիս Տր̄ դարձեալ. ա՛ռ դու քեզ գործի հովուութե̄ հովուի տգիտի։ 16 *Զի ահաւասիկ ես յարուցանեմ հովիւ տգէտ 'ի վ̄ր երկրի. զվտանեալն ոչ յանձանձիցէ. և զցրուեալն ոչ խնդրիցէ. և զբեկեալն ոչ բժշկեսցէ. և զողջն ոչ դարմանեսցէ. և զմիս ընտրելոցն կերիցէ. և զոտս նց̄ փշրեսցէ։ 17 *Ո՛վ տարապարտ արօտք՝ որք ընդ վայր հարիք զխաշինս. սուր 'ի բազուկս նր̄՝ և յակն իւր աջոյ. բազուկ նորա դօսանալով դօսասցի. և ակն իւր աջոյ կուրանալով կուրասցի։

‖Մատ. 27.9.

## Գլ. ԺԲ։

Բեռն բանի Տն̄ 'ի վ̄ր իէլի ասէ Տր̄՝ որ ձգեաց զերկինս՝ և եդ զհիմունս երկրի. և հաստատէ զոգի մարդոյ 'ի նմա։ 2 *Ահաւասիկ ես դնեմ զեէմ իբրև զսեամս շարժուն ա̄մ ժողովրդոց՝ որք շուրջ զնովաւ իցեն. և 'ի հրէաստանի եղիցի պաշարումն եէմի։ 3 *Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ եդից զեէմ իբրև զքար մի կոխան ա̄մ հեթանոսաց. ա̄մ որ կոխիցէ զնա. կատակելով կատակեսցի. և ժողովեսցին 'ի վ̄ր նր̄ ա̄մ ազգք երկրի։ 4 *Յաւուր յայնմիկ ասէ Տր̄ ամենակալ՝ հարից զա̄մ երիվար տագնապաւ. և զհեծեալ նր̄ յիմարութբ̄. և 'ի վ̄ր տանն յուդայ բացից զաչս իմ. և զա̄մ երիվարս ազգաց հարից կուրութբ̄։ 5 *Եւ ասասցեն հազարապետք յուդայ 'ի սիրտս իւրեանց. գտցուք մեք

մեզ զբնակիչս Եէմի 'ի ձեռն Տն ամե_
նակալի Այ նոցա: * Յաւուր յայնմիկ 6
եդից զհազարապետսն յուդայ իբրև
զխանձողս հրոյ 'ի մէջ փայտից. և իբրև
զլամբարս հրոյ 'ի մէջ եղեգան. և կե_
րիցեն յաջմէ և յահեկէ զամ ժողովրդս
շուրջանակի. և դարձեալ բնակեսցի
Եէմ առանձինն յԵէմ: * Եւ ապրե_ 7
ցուսցէ Տր զյարկսն յուդայ որպէս 'ի սկզբա_
նէն. զի մի մեծաբանեսցեն պարծանք
տանն Դաւթի. և հպարտութի բնակ_
չաց Եէմի 'ի վր տանն յուդայ: * Եւ ե_ 8
ղիցի յաւուր յայնմիկ պաշտպանեսցէ
Տէր զամ բնակչաց Եէմի. և եղիցի՝ որ
տկարն իցէ 'ի նմա յաւուր յայնմիկ՝ իբ_
րև զԴաւիթ. և տունն Դաւթի իբրև
զտունն Այ՝ իբրև զհրեշտակ Տն ա_
ռաջի նց: * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ 9
խնդրեցից բառնալ զամ ազգս եկեալս
'ի վր Եէմի: * Եւ հեղից 'ի վր տանն 10
Դաւթի՝ և 'ի վր բնակչաց Եէմի զհոգի
շնորհաց և գթութեն: ‖ Հայեսցին առ
իս փոխանակ կաքաւելոյն. և կոծեսցին
'ի վր նր կոծ իբրև 'ի վր սիրելւոյ. և
աշխարեսցեն աշխար իբրև 'ի վր անդ_
րանկան: * Յաւուր յայնմիկ սաստկաս_ 11
ցի կոծ յԵէմ. ‖ իբրև զկոծ Նռնենեաց
կոտորելոյ 'ի դաշտի: * Եւ կոծեսցի 12
երկիր ըստ ազգս ազգաց առանձինն:
* Ազգ տանն Դաւթի առանձինն. և 13
կանայք նոցա առանձինն. ազգ տանն
Ղևեայ առանձինն՝ և կանայք նոցա ա_
ռանձինն: ազգ տանն Շմաւոնի առան_
ձին. և կանայք նոցա առանձինն:
* Ամենայն ազգք մնացեալք առան_ 14
ձին. և կանայք նոցա առանձինն:

առ որ խոցեցին ‖ Յով. 19. 37.
‖ 2. Մնաց. 35. 22.

## Գլ: ԺԳ:

Յաւուր յայնմիկ եղիցի ամ տեղի 1
բացեալ տանն Դաւթի՝
և բնակողացն Եէմի 'ի լուացումն մե_
ղաւորի և դաշտանաւորի: * ‖ Եւ 2
եղիցի յաւուր յայնմիկ բարձցէ Տր զան_
ուանս կռոց յերկրէ՝ և ոչ ևս եղիցի
յիշատակ նց. և զսուտ մարգարէսն՝
և զայսս պղծս բարձից յերկրէ: * Եւ 3
եղիցի եթէ մարգարէանայցէ ոք տա_
կաւին. և ասասցեն ցնա հայր և մայր
իւր՝ որք ծնան զնա. մի կեցցիր՝ զի սուտ
խօսեցար յանուն Տն. և խափանեսցեն
զնա հայր և մայր նր՝ որք ծնան զնա՝ 'ի
մարգարէանալոյն: * Եւ եղիցի յաւ_ 4
ուր յայնմիկ ամաչեսցեն մարգարէքն՝
յիւրաքանչիւր տեսլենէ 'ի մարգարէա_
նալն իւրն. և զգեցցին փեղկս մազե_
ղէնս՝ փոխանակ զի ստեցին: * Եւ ա_ 5
սասցէ. չեմ ես մարգարէ՝ այլ այր հո_
ղագործ եմ ես՝ և մարդ ծնաւ զիս 'ի
6 մանկութէ իմմէ: * Եւ ասասցեն ցնա՝
զինչ են վէրքդ այդոքիկ 'ի մէջ ձեռաց
քոց. և ասասցէ՝ զորս վիրաւորեցայ 'ի
7 տան սիրելւոյ իմոյ: * Զարթիր սուր
'ի վր հովուի իմոյ՝ և 'ի վր առն ընկե_
րի նր՝ ասէ Տր ամենակալ. ‖ Հարից զհո_
վիւն և ցրուեսցին խաշինքն. և դար_
ձուցից զձեռն իմ 'ի վերայ հովուաց:
8 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ասէ Տր՝
երկու մասունք 'ի նմա սատակեսցին,
և պակասեսցին. և երրորդն մնասցէ 'ի
9 նմա: * Եւ անցուցից զերրորդ մասն
ընդ հուր. և ջեռուցից զնս՝ որպէս ջեռնու
արծաթ. և փորձեցից զնս որպէս փորձի
ոսկի: Նա կարդասցէ զանուն իմ, և ես
լուիցից նմա. և ասացից՝ ժողովուրդ իմ
է սա. և նա ասասցէ Տր Աստուած իմ ես դու:

ընկերի իմոյ
‖ Մատթ. 26. 31.
Մարկ. 14. 27.

## Գլ: ԺԴ:

1 Ահաւասիկ աւուրք Տն եկեսցեն.
և բաժանեսցի աւարն քո 'ի քեզ:
2 * Եւ ժողովեսցէ զամ ազգս 'ի վերայ
Եէմի 'ի պատերազմ. և առցի քաղաքն,
և յափշտակեսցին տունք, և պղծեսցին
կանայք, և ելցէ կէս քաղաքին 'ի գե_
րութի. և մնացորդք ժողովրդեան իմոյ
մի սատակեսցին 'ի քաղաքէ անտի:
3 * Եւ ելցէ Տր՝ և տացէ պատերազմ ընդ
ազգսն ընդ այնոսիկ. իբրև յաւուր ճա_
կատու իւրոյ յաւուր պատերազմի:
4 * Եւ կացցեն ոտք նր յաւուր յայնմիկ
'ի լերինն ձիթենեաց՝ հանդէպ Եէմի
յարևելից. և պատառեսցի լեառն ձի_
թենեաց՝ կէս նր յարևելս, և կէս նր
'ի ծով, վիհ մեծ յոյժ. և խոնարհեսցի
կէս լերինն առ հիւսիսի. և կէս նր առ
5 հարաւ: * Եւ խցցի ձոր լերանց իմոց:
և կցեսցի ձոր լերանցն մինչև ցԱսայէլ.
‖ և խցցի, զորօրինակ խցաւ յերեսաց
շարժմանն՝ յաւուրս Ոզիայ արքային յու_
դայ: և եկեսցէ, հասցէ Տր Այ իմ, և
6 ամ սուրբք ընդ նմա: * Եւ եղիցի յաւ_
ուր յայնմիկ՝ ոչ եղիցի լոյս և ցուրտ՝ և
7 պարզ: * Եղիցի օր մի. և օրն այն յայտ_
նի Տն. ոչ տիւ իցէ՝ և ոչ գիշեր. և ընդ
8 երեկս եղիցի լոյս: * Յաւուր յայնմիկ
բղխեսցի ջուր կենդանի յԵէմ. կէս նր
'ի ծովն առաջին. և կէս նր 'ի ծովն որ
յետոյ. զամառն և զգարունն նոյնպէս ե_
9 ղիցի: * Եւ եղիցի Տր թագաւոր 'ի վր
ամ երկրի. յաւուր յայնմիկ եղիցի Տր
10 մի՝ անուն նր մի: * Պատել զամ երկիր
զանապատն՝ 'ի Գաբայ մինչև ցՌեմոն՝
ընդ կողմն հարաւոյ Եէմի: և Ռամա 'ի
տեղւոջ իւրում կացցէ. 'ի դրանէն Բե_
նիամինի մինչև 'ի տեղի դրանն առա_
ջնոյ. մինչև 'ի դուռն անկեանցն. և մին_
չև ցաշտարակն Անանայելի՝ մինչև 'ի
Հնձանս

‖ Ամոս. 1. 1.

հնձանս Թագաւորին ։ * Եւ բնակեսցեն 'ի նմա. և նզովք ո՛չ ևս լիցին. և բնակեսցի Երէմ յուսով ։ 11 * Եւ այս իցեն հարուածք՝ զոր հարցէ Տր̅ զազգս ամ̅՝ որք զօրաժողով եղեն 'ի վ̅ր Երէմի. հալեսցին մարմինք նց̅ մինչդեռ կայցեն 'ի վ̅ր ոտից իւրց̅. և ծորեսցին աչք նց̅ 'ի կապճաց իւրեանց. և լեզուք նց̅ հալեսցին 'ի բերանս իւրց̅ ։ 12 * Եւ եղիցի յաւուր յայնմիկ աչ մեծ 'ի Տէ̅ 'ի վ̅ր նց̅. և բուռն հարկանիցեն իւրաքանչ իւր զձեռանէ ընկերի իւրոյ. և խառնեսցէ զձեռն իւր ընդ ձեռն ընկերի իւրոյ ։ 13 * Եւ յուդայ ճակատեսցի յԵրէմ. և ժողովեսցէ զզօրութի̅ ամ̅ ազգաց շուրջանակի. ոսկի՝ և արծաթ՝ և հանդերձ բազում յոյժ ։ 14 * Եւ այս իցեն հարուածք՝ ձիոց՝ և ջորւոց՝ և ուղտուց՝ և իշոց՝ և ամ̅ անասնոց՝ որք իցեն 'ի բանակին յայնմիկ ը̅ նմին հարուածոց ։ 15 * Եւ եղիցի, որք միանգամ մնասցեն յամ̅ ազգաց եկելոցն 'ի վ̅ր Երէմի՝ ելանիցեն ամ յամէ երկիր պագանել Թագաւորին Տն̅ Ի.Ջ ամենակալի. և առնել զտօն տաղաւարահարացն ։ 16, 17 * Եւ եղիցի որք միանգամ ոչ ելանիցեն յամ̅ ազգաց երկրի յԵրէմ երկիր պագանել Թագաւորին՝ Տն̅ Ի.Ջ ամենակալի, ո՛չ եղիցի 'ի վ̅ր նոցա անձրև՝ և սոքա 'ի նոյն յաւելցին ։ 18 * Եւ եթէ ազգն եգիպտացւոց ոչ ելանիցէ, և գայցէ. և 'ի վ̅ր նոցա եղիցին հարուածքն. զոր հարցէ Տր̅ զամ̅ ազգսն՝ որք ոչ ելանիցեն առնել զտօն տաղաւարահարացն ։ 19 * Այն եղիցի 'ի մեղս եգիպտացւոցն. և 'ի մեղս ամ̅ ազգաց՝ որք ոչ ելանիցեն առնել զտօն տաղաւարահարացն ։ 20 * Յաւուր յայնմիկ՝ որ 'ի խամձս ձիոյն՝ իցէ սրբութի̅ Տն̅ ։ և եղիցին սանք 'ի տան Տն̅ իբրև զտաշտս առաջի սեղանոյն ։ 21 * Եւ եղիցի ամ̅ սան՝ որ յԵրէմ՝ և որ 'ի յուդայ՝ նուիրեալ Տն̅ ամենակալի ։ և եկեսցեն ամենեքեան՝ որք մատուցանիցեն զպատարագ՝ առնուցուն 'ի նցն̅է եփեսցեն նոքօք. և ո՛չ ևս եղիցի 'ի տան Տն̅ ամենակալի քանանացի յաւուր յայնմիկ.

*Margin:* կափճաց

# ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ՄԱՂԱՔԻԱՅ

Գլուխ Առաջնորդ ։

Առած բանին Տն̅ 'ի վերայ Իսրայէլի 'ի ձեռն հրեշտակի իւրոյ ։ 1



ԻՔ 'Ի ՍԻՐՏՍ ՁԵՐ ։

2 * Սիրեցի զձեզ ասէ Տր̅. և ասացէք, իւ̅ սիրեցեր զմեզ. ո՞չ եղբայր էր եսաւ յակոբ՝ ասէ Տր̅. ‖ և սիրեցի զյակոբ ։ 3 * Եւ զեսաւ ատեցի, և կարգեցի զսահմանս նր̅ յապականութի̅. և զժառանգութի̅ նորա 'ի բաշխս անապատի ։ 4 * Զի թէ ասասցէ եդոմ. եթէ ահա կործանեցաւ. դարձցուք, և շինեսցուք զքաղաքս աւերեալս, այսպէս ասէ Տր̅ ամենակալ. նոքա շինեսցեն, և ես կործանեցից. և կոչեսցին նց̅ սահմանք անօրէնութե̅. և ժողովուրդ, ը̅ որում տացէ պատերազմ Տէր մինչև յյաւիտեան ։ 5 * Եւ աչք ձեր տեսցեն՝ և դուք խօսիցիք՝ եթէ բարձրասցաւ Տր̅ 'ի վ̅ր սահմանաց Իլի ։ 6 * Որդի փառաւոր առնէ զհայր՝ և ծառայ երկնչի 'ի Տէ̅ իւրմէ. իսկարդ եթէ հայր եմ, ո՞ւր են փառքն իմ. և եթէ Տէր եմ, ո՞ւր է պատիւն իմ՝ ասէ Տէր ամենակալ. դուք քահանայք էք՝ որք բամբասէք զանուն իմ. և ասէք՝ իւ̅ բամբասեցաք զանուն քո ։ 7 * Զի մատուցանէք 'ի սեղան իմ զհաց պղծութե̅. և ասէք, իւ̅ պղծեցաք զնա̅. յասելն ձերում թէ սեղան Տն̅ արհամարհեալ է. և զորինչ դնին 'ի վ̅ր, արհամարհէք ։ 8 * Զի եթէ մատուցանէք զկոյրն 'ի պատարագ՝ չիցէ չար. և եթէ մատուցանիցէք զկաղն կամ զհիւանդոտն՝ չիցէ չար. մա՛տո զնա իշխանին քում. թէ ընդունիցի զքեզ. կամ թէ առնուցու քեզ ակն՝ ասէ Տր̅ ամենակալ ։ 9 * Եւ այժմ աղաչեցէք զերեսս Ի.Ջ ձերոյ՝ և հաշտեցուցէք զնա. 'ի ձեռաց ձերոց եղև այդ. եթէ առից ինչ 'ի ձէնջ ակնառութի̅՝ ասէ Տր̅ ամենակալ ։ 10 * Զի և ձեզ դրունք փակեսցին՝ և մի̅ մերձենայք 'ի սեղան իմ վայրապար. զի ո՛չ են կամք իմ 'ի ձեզ՝ ասէ Տր̅ ամենակալ. և զպատարագս ո՛չ ընկալայց 'ի ձեռաց ձերոց ։ 11 * ‖ Զի յարևելից մինչև 'ի մուտս արևու փառաւորեալ է անուն իմ 'ի մէջ ազգաց. և յամ̅ տեղիս մատչին խունկք անուան իմոյ. և պատարագք սո̅ւրբք. զի մեծ է անուն իմ 'ի հեթանոսս՝ ասէ Տր̅ ամենակալ ։ 12 * Եւ դուք պղծեցիք զնա̅ յասելն ձեր՝ թէ սեղան Տն̅ պիղծ է. և

*Margin:* ‖ Հռոմ. 9.13. — ‖ Սաղմ. 112. 3.

և կերակուրն՝ որ դնի 'ի վր նր՝ արհամարհեալ: * Եւ ասէիք՝ թէ այն յաշխատուէ է. և փչեցից զայն արտաքս՝ ասէ Տր ամենակալ. և եթէ մատուցանէք ինձ զյափշտակեալն՝ և զկաղն՝ և զվտիտս պատարագ. թէ ընկալայց զնս 'ի ձեռաց ձերոց՝ ասէ Տր ամենակալ: 13 * Անիծեալ իցէ մարդն՝ որ կարող իցէ. և կայցէ 'ի խաշինս նր որձ. և ուխտ իւր յանձին իւրում. և մատուցանիցէ Տն զարատաւորն. զի թագաւոր յաղթօղ եմ ես՝ ասէ Տէր ամենակալ. և անուն իմ երևելի 'ի մէջ ազգաց: 14

## ԳԼ: Բ.

1 Եւ արդ այս պատուէր է իմ առ ձեզ քահանայք: 2 * ‖ Եթէ ոչ լուիցէք՝ և ոչ դնիցէք 'ի սրտի ձերում տալ փառս անուան իմում՝ ասէ Տէր ամենակալ. առաքեցից 'ի վերայ ձեր անէծս, և անիծից զօրհնութիւնս ձեր՝ և նզովեցից զնա. և ցրուեցից զօրհնութիւնս ձեր՝ և մի եղիցի 'ի միջի ձերում. զի դուք ոչ եդիք 'ի սրտի ձերում: 3 * Ահաւադիկ ես որոշեցից զձեզ թեկն. և ցանեցից զապականն ը երեսս ձեր՝ զապականն տօնից ձերոց. և բարձից զձեզ նովաւ: 4 * Եւ ծանիջիք՝ եթէ ես առաքեցի առ ձեզ զպատուէրդ զայդ՝ լինել ուխտի իմոյ առ ղևտացիսն. ասէ Տր ամենակալ: 5 * Ուխտն իմ, որ էր ը նմա՝ կենաց՝ և խաղաղութե. ես ետու նմա զերկիւղ՝ երկնչել յինէն՝ և յերեսաց անուան իմոյ խորշել: 6 * Օրէնք ճշմարտութե էին 'ի բերան նր. և անիրաւութն ոչ գտաւ 'ի շրթունս նր. խաղաղութբ՝ և ուղղութբ գնաց ընդ իս. և զբազումս դարձոյց յանիրաւութէ: 7 * Զի շրթունք քահանային զգուշասցին գիտութե. և օրէնս խնդրեսցեն 'ի բերանոյ նր. զի հրեշտակ Տն ամենակալի է: 8 * Իսկ դուք խոտորեցայք 'ի ճանապարհէ. և տկարացուցիք զբազումս օրինօքն. և ապականեցիք զուխտն ղևեայ՝ ասէ Տր ամենակալ: 9 * Եւ ես ետու զձեզ արհամարհեալս՝ և լքեալս ընդ ամ ազգս՝ փոխանակ զի ոչ պահեցիք զճանապարհս իմ. այլ ակն առնուիք օրինօքն: 10 * ‖ Ոչ ապաքէն մի հայր է ամենեցուն ձեզ. ոչ մի Ած հաստատեաց զձեզ. զի՞ է՝ զի թողիք իւրաքանչիւր զեղբայր իւր պղծել զուխտ հարցն ձերոց: 11 * Լքաւ յուդա՝ գարշելի գործեցաւ յիլ՝ և յեմ. զի պղծեաց յուդա զսրբութիւն Տն 'ի ձեռն այնոցիկ՝ զորս սիրեցին. և հարաւ յաստուածս օտարս: 12 * Սատակեսցէ Տր զմարդն՝ որ առնիցէ զայն՝ մինչև նկուն լիցի 'ի յարկացն յակոբայ: և 'ի մատուցանելեաց պատարագաց Տն ամենակալի: 13 * Եւ զոր եմն ասէիք՝ առնէիք. ծածկեցիք արտասուօք զսեղան իմ. և լալով քքուով յաշխատութենց. եթէ արժան իցէ միւսանգամ հայիլ 'ի պատարագս ձեր. և կամ առնուլ ընդունելութի 'ի ձեռաց ձերոց: 14 * Եւ ասացիք՝ բայ ընդէր. զի Տր եդ ուխտ 'ի մէջ քո. և 'ի մէջ կնոջ մանկութե քո՝ զոր թողեր. և նա էր ամուսին և կին ուխտի քո: 15 * Եւ ոչ այլոք արար՝ և հատոր ոգւոյ նորա է. և ասացէք՝ թէ զինչ այլինչ խնդրէ Ած, եթէ ոչ զզաւակ. զգուշացարուք յոգիս ձեր. և զկին մանկութե քո մի թողուր: 16 * Բայց եթէ ատեալ արձակիցես՝ ասէ Տր Ած իլի. ծածկեսցէ ամպարշտութի զխորհուրդս քո՝ ասէ Տր ամենակալ. և զգուշ լերուք 17 յոգիս ձեր. և մի թողուցուք: * Որք բարկացուցանէք զԱծ բանիւք ձերովք. և ասէք, իւ՞ բարկացուցաք զնա. յասելն ձեր՝ թէ ամենայն որ չար գործէ՝ բարւոք թուի յաչս Տն. և ընդ այն իսկ հաճեցաւ նա. և ո՞ւր է Ած արդարութե:

## ԳԼ: Գ.

1 Ահա ‖ ես առաքեմ զհրեշտակ իմ՝ և տեսցէ զճանապարհս առաջի իմ: և յանկարծակի եկեսցէ 'ի տաճար իւր Տր՝ զոր դուքն խնդրէք. և հրեշտակն ուխտի՝ զոր դուք կամիք. ահա-
2 ւասիկ գայ ասէ Տր ամենակալ: * Եւ ո՞ ժուժկալեսցէ աւուր մտի նորա. և կամ ո՞ հանդարտեսցէ յայտնութե նր. զի նա մտցէ իբրև զբոց հալոցի. և իբ-
3 րև զօճառ լուանալեաց: * Եւ նստցի 'ի ձուլել և սրբել իբրև զարծաթ՝ իբրև զոսկի. և սրբեսցէ զորդիսն ղևեայ. հալեսցէ զնս իբրև զոսկի՝ իբրև զարծաթ. և եղիցի Տն մատուցանել պա-
4 տարագս արդարութբ: * Եւ հաճոյ եղիցի Տն պատարագն յուդայ՝ և եէմի. ըստ աւուրցն յաւիտենից՝ և ըստ ամացն
5 առաջինս: * Եւ հասից 'ի վր ձեր դատաստանաւ. և եղէց վկայ արագ 'ի վր կախարդաց՝ և կանանց շնացելոց՝ և 'ի վր այնոցիկ որք երդնուն յանուն իմ ստութբ. և որք հատանիցեն զվարձս վարձկանի. և որք յաղթահարիցեն զայրիս՝ և կափիցեն զորբս. և որք խոտորիցեն զիրաւունս պանդխտին. և որք ոչ երկնչիցին յինէն՝ ասէ Տր ամենակալ:
6 * Զի ես եմ Տր Ած ձեր՝ և ոչ փոխիմ.
7 և դուք որդիք յակոբու, * Ոչ կայցէք 'ի բաց 'ի մեղաց հարցն ձերոց. † և ոչ պահեցիք զնս. ‖ դարձարուք առ իս՝ և ես

Margin: ‖ Ղևտ. 26. 14. 2. Օրէն. 28. 15. — ‖ Մատթ. 23. 9. Եփես. 4. 6. — ‖ Մատթ. 11. 10. Մարկ. 1. 2. Ղուկ. 1. 17. և 7. 27. Եսայ. 40. 3. — † խոտորեցայք յօրէնաց իմոց

‖ Զաք. 1. 3. ես դառնամ առ ձեզ ասէ Տր՛ Տր ամենակալ. եւ ասացէք, իւ դարձցուք:

8 *Իսկ՛, թէ խաբիցէ մարդ զԱծ՛ զի դուք խաբեցէք զիս. եւ ասացէք, իւ՞ խաբեցաք զքեզ. զի տասանորդք՝ եւ պտուղք առ ձեզ են: 9 *Եւ՛ չարկանէ լով չարկանէք՝ եւ խաբէք զիս: 10 *Տարէք կատարեցա՛լ եւ զարդիւնս ամ՛ 'ի շտեմարանս ձեր ժողովեցէք. եւ եղիցի յափշտակութիւն տանց ձերոց. եւ դարձարուք այդուէիկ՛ ասէ Տր ամենակալ. եթէ ոչ բացից զպատուհանս երկնից. եւ զեղից ձեզ զօրհնութիւն իմ մինչեւ 'ի շատանալ: 11 *Եւ՛ զգուշացայց կերակրոցն ձերոց. եւ ոչ ապականեցից զպտուղ երկրի ձերոյ. եւ մի վատեսցէ որթ ձեր յայգւոջ՛ ասէ Տր՛ ամենակալ: 12 *Եւ՛ երանիցեն ձեզ ամ ազգք. զի եղիցիք դուք երկիր կամաց՛ ասէ Տր ամենակալ: 13 *‖Ծանրացուցիք ինձ զբանս ձեր. ասէ Տր: 14 *Եւ՛ ասացիք՛ իւ՞ բամբասեցաք զքեզ. զի ասէիք. եթէ 'ի զուր է ամ՛ որ ծառայէ Այ. եւ զինչ աւելի է՛ զի պահեցաք զպահպանութիւնս նր. եւ զի գնացաք պաղատանօք առաջի Տն ամենակալի: 15 *Եւ՛ արդ մեք երանեմք այլոց. եւ բարեշէնք են ամենեքեան. որք գործեն զանօրէնութիւն. եւ ընդդէմ դարձան այ՛ եւ կեցին: 16 *Զայս տրտնջեցին երկիւղածք Տն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում. եւ անսաց Տէր՛ եւ լուաւ՛ եւ գրեաց գիր յիշատակի առաջի երկիւղածաց Տն. եւ որոց սարսին

Կ՛ չարաչ նեղով չարչարէք.

‖ Յօբ. 21.14.

յայնժամ խօսեցան երկիւղածք Տն

17 յանուանէ նր: *Եւ՛ եղիցին ինձ՝ ասէ Տէր ամենակալ. յաւուր յորում ես արարից զփրկութիւն. եւ փայփայեցից զնոսա. որպ փայփայէ հայր զորդի զբարւոք ծառայեալ նմա: 18 *Եւ՛ դարձջիք. եւ տեսջիք 'ի մէջ արդարոյն եւ 'ի մէջ անօրինին. եւ 'ի մէջ ծառայելոյն Այ՛ եւ 'ի մէջ չծառայելոյն:

## Գլ: Դ:

1 Զի ահա եկեսցէ օր Տն բորբոքեալ իբրեւ զհնոց՝ եւ այրեսցէ զնոսա. եւ եղիցին ամ այլազգիք. եւ ամենեքեան որք գործեն զանօրէնութիւն, եղէգն. եւ վառեսցի զնոքօք օրն. որ գալոց է՛ ասէ Տր ամենակալ. եւ մի մնասցէ նոցա արմատ եւ մի ոստ: 2 *‖Եւ՛ ծագեսցի ձեզ երկիւղածաց անուան իմոյ՛ արեգակն արդարութեան. եւ բժշկութիւն 'ի թեւս նր: եւ ելջիք՛ եւ խայտասջիք իբրեւ որթք արձակեալք 'ի կապոյ: 3 *Եւ՛ կոխեսջիք զանօրէնս. եւ եղիցին մոխիր 'ի ներքոյ ոտից ձերոց. յաւուր զոր ես արարից՝ ասէ Տր ամենակալ: 5 *‖Եւ՛ ահա ես առաքեմ առ ձեզ զեղիա թեզբացի. մինչչեւ եկեալ իցէ օրն Տն մեծ եւ երեւելի: 6 *Որ պատրաստեսցէ զսիրտ հօր առ որդի. եւ զսիրտ առն առ ընկեր իւր: գուցէ եկեալ հարկանիցեմ զերկիր միանգամայն: 4 *‖Յիշեցէք զօրէնսն մովսէսի ծառայի իմոյ. որպէս պատուիրեցի նմա 'ի քորէբ. զամ հրամանս՝ եւ զիրաւունս:

‖ Ղուկ. 1.78. ‖ Մատ. 17.10. ‖ Մար. 9.11. ‖ Ղուկ. 1.17. ‖ Ելից 20. 3. 2.Օրէ. 4.5.և 6.

## ՎԱԽՃԱՆ ՀՆՈՑ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ:

# ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

## Որոյ գրոց կարգ, և թիւ համարերձ գլխոյք համանշանին:



Նոր Կտակարանիս բովանդակեալն են գիրք, ԻԷ: 27:

※※※※



Յակոբ ծնաւ զՅուդա, և զեղբարս նորա։ Մատթէոս. 1.2.



Ահա հրեշտակ Տն 'ի տեսլեան երևեցաւ Յովսեփու։ Մատթէոս. 1.20.

# ՍՐԲՈՅ ԱՒԵՏԱՐԱՆԻՍ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ։ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ։

## Գլուխ Առաջներորդ։

1 ԳԻՐՔ ԾՆՆԴԵԱՆ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՈՐԴԻՈՅ ԴԱՒԹԻ. ՈՐԴԻՈՅ ԱԲՐԱՀԱՄՈՒ։

2 * Աբրահամ ծնաւ զԻսահակ։ Իսահակ ծնաւ զՅակոբ։ Յակոբ ծնաւ զՅուդայ և զեղբարս նր։ 3 * Յուդա ծնաւ զփարէս՝ և զզարայ 'ի Թամարայ. Փարէս ծնաւ զԵզրոն։ Եզրոն ծնաւ զարամ։ 4 * Արամ ծնաւ զԱմինադաբ։ Ամինադաբ ծնաւ զՆաասոն։ Նաասոն ծնաւ զսաղմոն։ 5 * Սաղմոն ծնաւ զբոոս 'ի հռաքեբայ։ Բոոս ծնաւ զյոբէթ 'ի հռութայ։ Ոբէթ ծնաւ զյեսսէ։ Յեսսէ ծնաւ 6 զդաւիթ արքայ։ * Դաւիթ արքայ ծնաւ զսաղոմոն 'ի կնոջէն ուրիայ։ 7 * Սաղոմոն ծնաւ զռոբովամ։ Ռոբովամ ծնաւ զաբիայ։ Աբիա ծնաւ 8 զասափ։ * Ասափ ծնաւ զյոսափատ. Յոսափատ ծնաւ զյորամ։ Յորամ 9 ծնաւ զոզիայ։ * Ոզիա ծնաւ զյովաթամ։ Յովաթամ ծնաւ զաքազ։ 10 Աքազ ծնաւ զեզեկիայ։ * Եզեկիա ծնաւ

Ղուկ. 3.31. Ծննդ. 21. 3. Ծննդ. 25.26. Ծննդ. 29. 35. 'Ի բոլոր-եայ. Ծննդ. 38.29. Ա.Մնա. 2. 4. Ա.Մնա 2. 5. Հռութ. 4.18. Թագաւ 7.12. Հռութ 4.22. Ա Թագ 16.1. Հռութ 4.22. Բ Թագ 12. 24. Գ Թագ 11. 43. Գ Թագ 14.31.

(3 Թագ. 15. 9. ‖ 2. Մնա. 26. 23. ‖ 2. Մն. 27. 9. ‖ 2. Մն. 28. 26. ‖ 2. Մն. 32. 33. ‖ 2. Մն. 33. 20. և 25. ‖ 2. Մն. 36. 1. և 2.)

ծնաւ զմանասէ ։ ‖ Մանասէ ծնաւ զամօն ։ Ամօն ծնաւ զյօսիա ։

11 *‖ Յօսիա ծնաւ զյեքոնիա՝ և զեղբարս նորա առ գերութեն բաբիլոնացւոց։

12 *‖ Յետ գերութեն բաբիլոնացւոց ծնաւ յեքոնիա զսաղաթիէլ։ Սաղաթիէլ ծնաւ զզօրաբաբէլ,

13 *‖ Զօրաբաբէլ ծնաւ զաբիուդ ։ Աբիուդ ծնաւ զեղիակիմ։ Եղիակիմ ծնաւ զազօր ։

14 *Ազօր ծնաւ զսադօկ ։ Սադօկ ծնաւ զաքին ։ Աքին ծնաւ զեղիուդ ։

15 *Եղիուդ ծնաւ զեղիազար ։ Եղիազար ծնաւ զմատթան ։ Մատթան ծնաւ զյակոբ ։

16 *Յակոբ ծնաւ զյօսեփ զայրն մարիամու՝ որում խօսեցեալ զՄարիամ կոյս՝ յորմէ ծնաւ Յս՟. որ անուանեցաւ Քս՟ ։

17 *Արդ՝ ամ՟ ազգք յաբրահամէ մինչև ՚ի դաւիթ՝ ազգք չորեքտասանք ։ և ՚ի դաւթէ մինչև ՚ի գերութիւն բաբիլոնացւոց՝ ազգք չորեքտասանք ։ և ՚ի գերութենէ բաբիլոնացւոց մինչև ՚ի Քս՟ ազգք չորեքտասանք ։

(‖ Ղուկ. 1. 27.)

18 * ‖ Եւ Յի՟ Քի՟ ծնունդն էր այսպէս ։ խօսեցեալ զմայր նր՟ Մարիամ Յօսեփու՝ մինչչև եկեալ առ միմեանս՝ գտաւ յղացեալ ՚ի Հոգւոյն սրբոյ ։

19 *Եւ յօսէփ այր նր՟ քանզի արդար էր. և ոչ կամեցաւ առակել զնա ։ խորհեցաւ լռելեայն արձակել զնա ։

20 *Եւ մինչդեռ նա զայս ածէր զմտաւ՝ ահա հրեշտակ Տն՟ ՚ի տեսլեան երևեցաւ նմա՝ և ասէ ։ յօսէփ որդի դաւթի . մի՛ երկնչիր առնուլ առ քեզ զմարիամ կին քո . քանզի որ ՚ի նմայն ծնեալ է, ՚ի Հոգւոյն սրբոյ է ։

(‖ Ղուկ. 1. 31. Գործ. 4. 12.)

21 *‖ Ծնցի որդի . և կոչեսցես զանուն նր՟ Յս՟. զի նա փրկեսցէ զժողովուրդ իւր ՚ի մեղաց իւրեանց ։

22 *Այլ այս ամ՟ եղև . զի լցցի՝ ծր ասացաւն ՚ի Տէ՟ ՚ի ձեռն եսայեայ մարգարէի ։

(‖ Եսայ. 7. 14.)

23 *‖ Ահա կոյս յղասցի. և ծնցի որդի . և կոչեսցեն զանուն նր՟ Էմմանուէլ . որ թարգմանի՝ ընդ մեզ Աստուած ։

24 *Եւ զարթուցեալ յօսէփ ՚ի քնոյ անտի, արար որ՟ հրամայեաց նմա հրեշտակն Տն՟ ։ և էառ ՚ի կին զկին իւր ։

25 *Եւ ոչ գիտէր զնա . մինչև ծնաւ զորդին իւր զանդրանիկ ։ և կոչեաց զանուն նորա Յս՟ ։

## ԳԼ։ Բ։

(‖ Ղուկ. 2. 7.)

1 Եւ ՚ի ծնանելն Յի ՚ի բեթղեհեմ հրէաստանի, յաւուրս հերովդէի արքայի ։ ահա մոգք յարևելից եկին յերուսաղէմ ,

2 *Եւ ասեն՝ ո՞ւր է՝ որ ծնաւ արքայն հրէից . զի տեսաք զաստղ նր՟ յարևելս . և եկաք երկիրպագանել նմա ։

3 *Եւ իբրև լուաւ արքայ հերովդէս՝ խռովեցաւ՝ և ամ՟ երուսաղէմ ընդ նմա ։

4 *Եւ ժողովեալ զամ՟ զքահանայապետս՝ և զդպիրս ժողովրդեանն. հարցանէր ՚ի նոցանէ . թէ ո՞ւր ծնանիցի Քս՟ն ։

5 *Եւ նոքա ասեն ցնա . ՚ի բեթղեհեմ հրէաստանի. զի այսպ՟ գրեալ է ՚ի ձեռն մարգարէին ։

(‖ Միք. 5. 2. Յովհ. 7. 42.)

6 *‖ Եւ դու բեթղեհեմ երկիր յուդայ՝ ոչ ինչ կրտսեր ես յիշխանս յուդայ ։ ՚ի քէն ելցէ ինձ իշխան . որ հովուեսցէ զժողովուրդ իմ զիսրայէլ ։

7 *Յայնժամ հերովդէս գաղտ կոչեաց զմոգսն՝ և ստուգեաց ՚ի նոցանէ զժամանակ աստեղն երևելոյ ։

8 *Եւ արձակեալ զնս՟ ՚ի բեթղեհեմ, ասէ ։ գնացէք և ստուգեցէք վս՟ մանկանն . և յորժամ գտանիցէք՝ ազդ արասջիք ինձ ։ զի և ես եկեալ երկիր պագից նմա ։

9 *Եւ նք՟ իբրև լուան ՚ի թագաւորէն, գնացին . և ահա աստղն զոր տեսին յարևելս՝ առաջնորդեաց նց՟ մինչև եկեալ եկաց ՚ի վերայ՝ ուր էր մանուկն ։

10 *Իբրև տեսին զաստղն, խնդացին յոյժ յուրախութի մեծ ։



11 *Եւ իբրև մտին ՚ի տունն՝ տեսին զմանուկն հանդերձ մարիամաւ մարբն իւրով . և անկեալ երկիրպագանէին նմա . ‖ և բացեալ զգանձս իւրեանց՝ մատուցին նմա պատարագս ոսկի՝ և կնդրուկ՝ և զմուռս ։

(‖ Սաղմ. 71. 10.)

12 *Եւ հրաման առեալ ՚ի տեսլեան չդառնալ անդրէն առ հերովդէս , ընդ այլ ճանապարհ գնացին յաշխարհն իւրեանց ։

13 *Եւ իբրև գնացին նոքա անտի . ահա

հրեշտակ Տն երեւէր 'ի տեսլեան յօսեփու՝ եւ ասէր. արի՛, ա՛ռ զմանուկդ եւ զմայր իւր՝ եւ փախի՛ր յեգիպտոս. եւ անդ լինիջի՛ր՝ ցորժամ ասացից քեզ: քանզի 'ի խնդիր է հերովդէս կորուսանել զմանուկդ : 14 * Եւ նա յարուցեալ էառ զմանուկն եւ զմայր իւր գիշերի. եւ գնաց յեգիպտոս: եւ անդ էր մինչեւ ցվախճան հերովդէի: 15 * Զի լցցի ասացեալն 'ի Տէ 'ի ձեռն մարգարէին՝ որ ասէ: ‖ յեգիպտոսէ կոչեցի զորդի իմ:

Ովսէ. 11. 1.



16 * Յայնժամ իբրեւ ետես հերովդէս թէ խաբեցաւ 'ի մոգուց անտի, բարկացաւ յոյժ: եւ առաքեալ կոտորեաց զա՛մ մանկունսն՝ որ էին 'ի բեթղեհէմ եւ յա՛մ սահմանս նր՝ յերկեմենից եւ 'ի խոնարհ. ըստ ժամանակին զոր ստուգեաց 'ի մոգուցն : 17 * Յայնժամ կատարեցաւ ասացեալն 'ի ձեռն երեմիայի մարգարէի. որ ասէ : 18 * ‖ Ձայն գուժեաց 'ի հռամայ. ողբումն՝ եւ լալումն՝ եւ աշխարումն յոյժ : հռաքէլ լայր զորդիս իւր՝ եւ ոչ կամէր մխիթարիլ՝ զի ոչ էին : 19 * Եւ 'ի վախճանիլն հերովդէի. ահա հրեշտակ Տն 'ի տեսլեան երեւի յօսեփայ յեգիպտոս: 20 * Եւ ասէր՝ արի՛, ա՛ռ զմանուկդ եւ զմայր իւր՝ եւ գնա՛ յերկիրն իլի. զի մեռան՝ որք խնդրէին զանձն մանկանդ: 21 * Եւ նա յարուցեալ էառ զմանուկն եւ զմայր նորա. եւ եկն յերկիրն իլի: 22 * Եւ իբրեւ լուաւ եթէ արքեղայոս

Երեմ. 31. 15.

թագաւորեաց հրէաստանի փոխանակ հերովդէի հօրն իւրոյ՝ երկեաւ երթալ անդր: եւ հրաման առեալ 'ի տեսլեան, գնաց 'ի կողմանս գալիլեացւոց : 23 * Եւ եկեալ բնակեցաւ 'ի քաղաքին՝ որ կոչի նազարեթ : զի լցցի բան մարգարէից. թէ նազովրեցի կոչեսցի:

## Գլ: Գ:

1 Յաւուրսն յայնոսիկ գայ յօհաննէս մկրտիչ քարոզել յանապատին 2 հրէաստանի: * ‖ Եւ ասել: ապաշխարեցէ՛ք՝ զի մերձեալ է արքայութի երկնից: 3 * Զի սա՛ է՝ վն որոյ ասացաւ 'ի ձեռն եսայեայ մարգարէի, որ ասէ. ‖ ձայն բարբառոյ յանապատի. պատրաստ արարէք զճանապարհ Տն. եւ ուղի՛ղ արարէք զշաւիղս նր: 4 * Եւ ինքն յօհաննէս ունէր զհանդերձ 'ի ստեւոյ ուղտու. եւ գօտի մաշկեղէն ընդ մէջ իւր: եւ կերակուր նորա էր մարախ եւ մեղր վայրենի: 5 * ‖ Յայնժամ ելանէին առ նա ա՛մ եմմացիք՝ եւ ա՛մ հրէաստան. եւ ա՛մ կողմն յորդանանու: 6 * Եւ մկրտէին 'ի նմանէ 'ի յորդանան՝ եւ խոստովան լինէին զմեղս իւրեանց: 7 * Եւ տեսեալ զբազումս 'ի սադուկեցւոցն եւ 'ի փարիսեցւոց եկեալս 'ի մկրտութի նր՝ ասէ ցնս: ծնունդք իժից՝ ո՛ եցոյց ձեզ փախչել 'ի բարկութէն՝ 8 որ գալոցն է: * Արարէք այսուհետեւ պտուղ արժանի ապաշխարութե: 9 * Եւ մի՛ համարիցիք ասել յանձինս՝ թէ ‖ ունիմք մեք հայր զաբրահամ: ասեմ ձեզ : զի կարող է Ած 'ի քարանցս յայսցանէ յարուցանել որդիս 10 աբրահամու: * Զի աւասիկ տապար առ արմին ծառոց դնի. ա՛մ ծառ որ ո՛չ առնէ զպտուղ բարի, հատանի եւ 11 'ի հուր արկանի: * ‖ Ես մկրտեմ զձեզ ջրով յապաշխարութի. բայց որ զկնի իմ գայ՝ հզօրագոյն է քան զիս : եւ ես չեմ բաւական բառնալ զկօշիկս նր : նա մկրտեսցէ զձեզ 'ի Հոգին սբ՝ եւ 'ի 12 հուր: * Որոյ հեծանոցն 'ի ձեռին իւրում. եւ սրբեսցէ զկալ իւր. եւ ժողովեսցէ զցորեանն 'ի շտեմարանս իւր: եւ զյարդն այրեսցէ անշէջ հրով: 13 * ‖ Յայնժամ գայ Յս 'ի գալիլեէ 'ի յորդանան առ յօհաննէս՝ մկրտել 'ի 14 նմանէ: * Եւ յօհաննէս արգելու զնա՝ եւ ասէ: ինձ պիտոյ է 'ի քէն մկրտիլ՝ եւ 15 դու առ իս գաս: * Պատասխանի ետ Յս եւ ասէ ցնա. թո՛յլ տուր այժմ. զի այսպէս վայել է մեզ լնուլ զա՛մ արդարութի: եւ ապա թոյլ ետ նմա: 16 * Եւ իբրեւ մկրտեցաւ Յս, ել վաղվաղակի 'ի ջրոյ անտի : եւ ահա բացան

Մարկ. 1. 4. Ղուկ. 3. 3. Եսայ. 40. 3. Մարկ. 1. 5. Ղուկ. 3. 4. Յոհ. 8. 39. Մարկ. 1. 8. Ղուկ. 3. 16. Յոհան. 1. 26. Գործ. 1. 5. Մարկ. 1. 9. Ղուկ. 3. 21.

նմա

նմա երկինք. և ետես զՀոգին Այ՟ զի իջանէր իբրև զաղաւնի. և գայր 'ի վերայ նորա: 17 *Եւ ահա ձայն յերկնից՝ որ ասէր. դա է Որդի իմ սիրելի. ընդ որ հաճեցայ:

Ղուկ. 9.35. 2. Պետ. 1.17.

ԳԼ: Դ:

1 Յայնժամ վարեցաւ Յս՟ յանապատ 'ի Հոգւոյն փորձել 'ի սատանայէ: 2 *Եւ պահեալ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր՝ ապա քաղցեաւ: 3 *Եւ մատուցեալ փորձիչն՝ ասէ ցնա. եթէ Որդի ես Այ՟ ասա, զի քարինքս այսոքիկ հաց լինիցին: 4 *Նա պատասխանի ետ՝ և ասէ: գրեալ է՝ թէ ոչ հացիւ միայն կեցցէ մարդ. այլ ամ՟ բանիւ որ ելանէ 'ի բերանոյ Այ՟: 5 *Յայնժամ առեալ ածէ զնա սատանայ 'ի քաղաքն սբ՟. և կացուցանէ զնա 'ի վր՟ աշտարակի տաճարին: 6 *Եւ ասէ ցնա. եթէ Որդի ես Այ՟ արկ զքեզ աստի 'ի վայր: զի գրեալ է. թէ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վս՟ քո. և 'ի վր՟ ձեռաց բարձցեն զքեզ՝ զի մի երբէք հարցես զքարի զոտն քո: 7 *Ասէ ցնա դարձեալ Յս՟ գրեալ է՝ թէ ոչ փորձեսցես զՏր՟ Այ՟ քո: 8 *Դարձեալ առեալ ածէ զնա սատանայ 'ի լեառն մի բարձր յոյժ: և ցուցանէ նմա զամ՟ թագաւորութիւնս աշխարհի. և զփառս նոցա: 9 *Եւ ասէ ցնա. զայս ամ՟ քեզ տաց՝ եթէ անկեալ երկիր պագանիցես ինձ: 10 *Յայնժամ ասէ ցնա Յս՟. երթ յետս իմ սատանայ. զի գրեալ է. Տր՟ Այ՟ քում երկիրպագցես՝ և զնա միայն պաշտեսցես: 11 *Ապա եթող զնա սատանայ՝ և ահա հրեշտակք մատեան՝ և պաշտէին զնա: 12 *Եւ իբրև լուաւ Յս՟ եթէ յոհաննէս մատնեցաւ՝ մեկնեցաւ և գնաց 'ի գալիլեա. 13 *Եւ թողեալ զնազարեթ, եկն և բնակեցաւ 'ի կափառնայում՝ 'ի ծովեզերին. 'ի սահմանս զաբուղոնի. և նեփթաղիմայ: 14 *Զի լցցի բանն՝ որ ասացաւ 'ի ձեռն եսայեայ մարգարէի: 15 *Երկիր զաբուղոնի՝ և երկիր նեփթաղիմայ՝ ճանապարհ ծովու՝ յայնկոյս յորդանանու. գալիլեայ հեթանոսաց: 16 *Ժողովուրդ որ նստէր 'ի խաւարի՝ ետես լոյս մեծ: և որոց նստէին յաշխարհին և 'ի ստուերս մահու՝ լոյս ծագեաց նց՟: 17 *Յայնմհետէ սկսաւ քարոզել Յս՟ և ասել. ապաշխարեցէք. զի մերձեալ է արքայութիւն երկնից: 18 *Մինչդեռ զգնայր Յս՟ ընդ եզր ծովուն գալիլեացւոց՝ ետես երկուս եղբարս. զսիմոն զկոչեցեալն պետրոս. և զանդրէաս եղբայր նր՟ ար կեալ զուռկանս 'ի ծով (քանզի ձկնորսք էին:) 19 *Եւ ասէ ցնոսա: եկայք զկնի իմ. և արարից զձեզ որսորդս մարդկան: 20 *Եւ նց՟ թողեալ զուռկանս՝ գնացին զհետ նր՟: 21 *Եւ մատուցեալ անտի յառաջ՝ ետես այլ երկուս եղբարս. զյակոբոս զզեբեդեայ՝ և զյոհաննէս զեղբայր նր՟ 'ի նաւի զեբեդեաւ հանդերձ հարբն իւրեանց, մինչ կազմէին զուռկանս իւրեանց. և կոչեաց զնս՟: 22 *Նոցա թողեալ զնաւն և զհայրն իւրեանց՝ գնացին զհետ նր՟: 23 *Եւ շրջէր Յս՟ ընդ ամ՟ կողմն գալիլեացւոց. ուսուցանէր 'ի ժողովուրդս նց՟՝ և քարոզէր զաւետարանն արքայութե՟ն՝ և բժշկէր զամ՟ հիւանդութիւնս, և զամ՟ ախտս 'ի ժողովրդեանն: 24 *Եւ ել լուր նորա ընդ ամ՟ երկիրն ասորւոց: և մատուցին առ նա զամ՟ հիւանդս՝ որք նեղեալք էին 'ի պէսպէս ցաւս և 'ի տանջանս. և զդիւահարս՝ և զլուսնոտս. և զանդամալոյծս. և բժշկեաց զնս՟: 25 *Եւ երթային զհետ նր՟ ժողովուրդք բազումք. 'ի գալիլէէ. և 'ի դեկապօլեայ. և յե՟մէ. և 'ի հրէաստանէ. և յայնկոյս յորդանանու. և բժշկեաց զնոսա:

ԳԼ: Ե:

1 Եւ տեսեալ զժողովուրդսն՝ ել 'ի լեառն. և իբրև նստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտք նորա:



*Եւ բա_

2 *Եւ բացեալ զբերան իւր՝ ուսուցանէր զնոսա՝ և ասէր ։

3 *Երանի աղքատաց հոգւով՝ զի նոցա է արքայութիւն երկնից ։ 4 *Երանի սգաւորաց՝ զի նոքա մխիթարեսցին ։

5 *Երանի հեզոց՝ զի նոքա ժառանգեսցեն զերկիր ։ 6 *Երանի՝ որք քաղցեալ և ծարաւի իցեն արդարութեան՝ զի նոքա յագեսցին ։ 7 *Երանի ողորմածաց՝ զի նոքա զողորմութիւն գտցեն ։ 8 *Երանի այնոցիկ՝ որք սուրբ են սրտիւք ․ զի նոքա զԱստուած տեսցեն ։

9 *Երանի խաղաղարարաց՝ զի նոքա որդիք Աստուծոյ կոչեսցին ։ 10 *Երանի որք հալածեալ իցեն վասն արդարութեան՝ զի նոցա է արքայութիւն երկնից ։

11 *Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ՝ և հալածեսցեն ․ և ասիցեն զամենայն բան չար զձէնջ սուտ վասն իմ ։

12 *Ցնծացէք և ուրախ լերուք ․ զի վարձք ձեր բազում են յերկինս ․ զի այսպէս հալածեցին զմարգարէսն, որք յառաջ քան զձեզ էին ։ 13 *Դուք էք աղ երկրի ․ ապա թէ աղն անհամի՝ ի՞ւ յաղիցի ․ ոչ ինչ ազդիցէ այնուհետև ․ բայց եթէ ընկենուլ արտաքս՝ և կոխան լինել ՚ի մարդկանէ ։ 14 *Դուք էք լոյս աշխարհի ․ ոչ կարէ քաղաք թաքչիլ՝ որ ՚ի վերայ լերին կայցէ ։ 15 *Եւ ոչ լուցանեն զճրագ՝ և դնեն ընդ գրուանաւ ․ այլ ՚ի վերայ աշտանակի՝ և լոյս տայ ամենեցուն՝ որք ՚ի տանն իցեն ։

16 *Այնպէս լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան ․ որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս՝ և փառաւորեսցեն զհայր ձեր՝ որ յերկինս է ։

Բ. Պ.

17 *Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս կամ զմարգարէս ․ ոչ եկի լուծանել՝ այլ լնուլ ։ 18 *Ամէն ամէն ասեմ ձեզ՝ մինչև անցցեն երկինք և երկիր՝ յովտ մի, որ նշանախեց մի է, ոչ անցցէ յօրինացն և ՚ի մարգարէից՝ մինչև ամենայն եղիցի ։ 19 *Որ ոք լուծցէ մի ինչ ՚ի պատուիրանացս յայսցանէ ՚ի փոքունց, և ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից ․ իսկ որ արասցէ, և ուսուսցէ՝ նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից ։

20 *Բայց ասեմ ձեզ ․ զի եթէ ոչ առաւելցի արդարութիւն ձեր աւելի քան զդպրացն և զփարիսեցւոց, ոչ մտանիցէք յարքայութիւն երկնից ։ 21 *Լուարուք՝ զի ասացաւ առաջնոցն ․ թէ մի՛ սպանաներ ․ զի որ սպանանիցէ՝ պարտական լիցի դատաստանի ։ 22 *Այլ ես ասեմ ձեզ ․ եթէ ամենայն որ բարկանայ եղբօր իւրում տարապարտուց՝ պարտաւոր լիցի դատաստանի ․ և որ ասիցէ ցեղբայր իւր յիմար, պարտաւոր լիցի ատենի ․ և որ ասիցէ ցեղբայր իւր մորոս, պարտաւոր լիցի գեհենին հրոյն ։

Ղուկ. 6. 20. Եսայ. 61. 3. Սաղ. 36. 11. Սաղ. 23. 4. Ա. Պետ. 2. 20. և 3. 14. և 4. 14. Մարկ. 9. 49. Ղուկ. 14. 34. Մարկ. 4. 21. Ղուկ. 8. 16. և 11. 33. Ա. Պետ. 2. 12. Ղուկ. 16. 17. Յակ. 2. 10. Ղուկ. 11. 39. Ելից. 20. 13. Բ. Օրէն. 5. 18.

23 *Եթէ մատուցանիցես զպատարագ քո ՚ի վերայ սեղանոյ ․ և անդ յիշեսցես, եթէ եղբայր քո ունի ինչ զխէթ զքէն ։ 24 *Թո՛ղ զպատարագն քո առաջի սեղանոյն ․ և երթ նախ հաշտեաց ընդ եղբօր քում ․ և ապա եկեալ մատուսջիր զպատարագն քո ։ 25 *Եր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղվաղակի ․ մինչդեռ իցես ընդ նմա ՚ի ճանապարհի ․ գուցէ մատնիցէ զքեզ ոսոխն դատաւորի ․ և դատաւորն դահճի ․ և արկանիցիս ՚ի բանտ ։ 26 *Ամէն ասեմ քեզ ․ ոչ ելանիցես անտի, մինչև հատուցանիցես զյետին նաքարակիտն ։ 27 *Լուարուք՝ զի ասացաւ մի՛ շնար ։ 28 *Բայց ես ասեմ ձեզ ․ թէ ամենայն որ հայի ՚ի կին մարդ առ ՚ի ցանկանալոյ նմա՝ անդէն շնացաւ ընդ նմա ՚ի սրտի իւրում ։ 29 *Եթէ ակն քո աջ գայթագղեցուցանէ զքեզ՝ խլեա՛ զնա ․ և ընկեա՛ ՚ի քէն ․ զի լաւ է քեզ՝ եթէ մի յանդամոց քոց կորիցէ ․ և մի՛ ամենայն մարմինդ քո անկանիցի ՚ի գեհեն ։ 30 *Եւ եթէ աջ ձեռն քո գայթագղեցուցանէ զքեզ, հա՛տ զնա՝ և ընկեա՛ ՚ի քէն ․ զի լաւ է քեզ՝ եթէ մի յանդամոց քոց կորիցէ ․ և մի՛ ամենայն մարմինդ քո արկանիցի ՚ի գեհեն ։

31 *Ասացեալ է՝ եթէ որ արձակիցէ զկին իւր՝ տացէ նմա զարձակմանն ։ 32 *Բայց ես ասեմ ձեզ ։ եթէ ամենայն որ արձակէ զկին իւր առանց բանի պոռնկութեան՝ նա տայ նմա շնալ ․ և որ զարձակեալն առնէ՝ շնայ ։

33 *Դարձեալ լուարուք ․ զի ասացաւ առաջնոցն՝ մի՛ երդնուցուս սուտ ․ բայց հատուսցես Տեառն զերդմունս քո ։ 34 *Այլ ես ասեմ ձեզ՝ ամենևին մի՛ երդնուլ ․ մի՛ յերկինս՝ զի աթոռ է Աստուծոյ ։ 35 *Եւ մի՛ յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա ․ և մի՛ յԵրուսաղէմ ․ զի քաղաք է մեծի արքայի ։ 36 *Եւ մի՛ ՚ի գլուխ քո երդնուցուս՝ զի ոչ կարես մազ մի սպիտակ առնել կամ թուխ ։ 37 *Այլ եղիցի ձեր բան՝ այոն, այո, և ոչն՝ ոչ ․ զի աւելին քան զայն ՚ի չարէն է ։

38 *Լուարուք՝ զի ասացաւ ․ ակն ընդական ․ և ատամն ընդ ատաման ։ 39 *Այլ ես ասեմ ձեզ՝ մի՛ կալ հակառակ չարի ․ այլ եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո՝ դարձո՛ նմա և զմիւսն ։ 40 *Եւ որ կամիցի ոք դատել և առնուլ զշապիկս քո, թո՛ղ ՚ի նմա և զբաճկոն քո ։ 41 *Եւ որ տարապարհակ վարիցէ զքեզ մղոն մի, երթ ընդ նմա և երկուս ։ 42 *Որ ոք խնդրէ ՚ի քէն՝ տո՛ւր ։

Ղուկ. 12. 58. Ելից. 20. 14. Մատ. 18. 9. Մարկ. 9. 47. Բ. Օրէն. 24. 1. Մատ. 19. 7. Մարկ. 10. 4. Ղուկ. 16. 18. Ա. Կորն. 7. 10. Ղևտ. 19. 12. Ելից. 20. 7. Բ. Օրէն. 5. 11. Յակ. 5. 12. Ելից. 21. 24. Բ. Օրէն. 19. 21. Ղևտ. 24. 20. Ղուկ. 6. 29. Ա. Կորն. 6. 7.

տուր. և որ կամի փոխ առնուլ 'ի քէն՝ մի՛ դարձուցանէր զերեսս: 43 *Լուա՛րուք՝ զի ասացաւ. սիրեսցես զընկեր քո՝ և ատեսցես զթշնամին քո: 44 *Այլ ես ասեմ ձեզ, սիրեցէ՛ք զթշնամիս ձեր. բարի՛ արարէք ատելեաց ձերոց: և աղօ՛թս արարէք 'ի վե՛րայ այնոցիկ՝ որք լլկեն զձեզ և հալածեն: 45 *Զի եղիջիք որդիք Հօր ձերոյ՝ որ յերկինս է: զի զարեգակն իւր ծագէ 'ի վե՛րայ չարաց և բարեաց. և ածէ անձրև 'ի վերայ արդարոց և մեղաւորաց: 46 *Զի եթէ սիրիցէք զայնոսիկ, որք սիրեն զձեզ, զի՞նչ վարձք իցեն. ո՞չ ապաքէն և մաքսաւորք զնոյն գործեն: 47 *Եւ եթէ տայցէք միայն ողջոյն բարեկամաց ձերոց՝ զի՞նչ աւելի առնէք. ո՞չ ապաքէն մաքսաւորք և մեղաւորք զնոյն գործեն: 48 *Արդ՝ եղերո՛ւք դուք կատարեալք. որպէս և Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է:

## ԳԼ. Զ.

ԲՆ

1 Զգո՛յշ լերուք ողորմութեան ձերում մի՛ առնել առաջի մարդկան. ո՛չ թէ 'ի ցոյց ինչ նոցա. գուցէ և վարձս ո՛չ ընդունիցիք 'ի Հօրէն ձերմէ՝ որ յերկինս է: 2 *Այլ յորժամ առնիցես զողորմութիւն, մի՛ հարկաներ փող առաջի քո՝ որպէս կեղծաւորքն առնեն 'ի ժողովուրդս և 'ի հրապարակս, որպէս զի փառաւորեսցին 'ի մարդ-



կանէ. ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա: 3 *Այլ դու յորժամ զողորմութիւն առնիցես, մի՛ գիտասցէ ձախ քո՝ զինչ գործէ աջ քո: 4 *Որպէս զի եղիցի ողորմութիւն քո 'ի ծածուկ. և Հայրն քո՝ որ տեսանէ 'ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս: 5 *Եւ յորժամ յաղօթս կայցէք, մի՛ լինիցիք որպէս կեղծաւորքն՝ զի սիրեն 'ի ժողովուրդս և յանկիւնս հրապարակաց կալ յաղօթս. որպէս զի երևեսցին մարդկան. ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա: 6 *Այլ դու յորժամ կայցես յաղօթս, մո՛ւտ 'ի սենեակ քո: և փակեա՛ զդուրս քո. և կա՛ց յաղօթս առ Հայր քո 'ի ծածուկ. և Հայրն քո, որ տեսանէ 'ի ծածուկ՝ հատուսցէ քեզ յայտնապէս: 7 *Եւ յորժամ կայցէք յաղօթս, մի՛ շատախօսք լինիք իբրև զհեթանոսսն. զի համարին եթէ 'ի բազում խօսից իւրեանց լսելի լինիցին: 8 *Արդ՝ մի՛ նմանիցիք նոցա. զի գիտէ Հայր ձեր. զինչ պիտոյ է ձեզ՝ մինչչև ձեր խնդրեալ ինչ իցէ 'ի նմանէ: 9 *Եւ արդ՝ ա՛յսպէս կացէք դուք յաղօթս. Հայր մեր՝ որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո: 10 *Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո՝ որպէս յերկինս և յերկրի: 11 *Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր: 12 *Եւ թո՛ղ մեզ զպարտիս մեր՝ որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց: 13 *Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն. այլ փրկեա՛ զմեզ 'ի չարէ: զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս: 14 *Զի եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա՝ թողցէ և ձեզ Հայրն ձեր երկնաւոր զյանցանս ձեր: 15 *Ապա թէ ո՛չ թողուցուք մարդկան զյանցանս նոցա. և ո՛չ Հայրն ձեր երկնաւոր թողցէ ձեզ զյանցանս ձեր: 16 *Եւ յորժամ պահիցէք՝ մի՛ լինիք իբրև զկեղծաւորսն տրտմեալք. որք ապականեն զերեսս իւրեանց. որպէս զի երևեսցին մարդկան թէ պահիցեն. ամէն ասեմ ձեզ՝ այն իսկ են վարձք նոցա: 17 *Այլ դու յորժամ պահիցես՝ օծ զգլուխ քո՝ և լուա՛ զերեսս քո: 18 *Զի մի՛ երևեսցիս մարդկան իբրև զպահօղ: այլ Հօրն քում 'ի ծածուկ. և Հայրն քո՝ որ տեսանէ 'ի ծածուկ՝ հատուսցէ քեզ: 19 *Մի՛ գանձէք ձեզ գանձս յերկրի. ուր ցեց և ուտիճ ապականեն. և ուր գողք ական հատանեն. և գողանան: 20 *Այլ գանձեցէ՛ք ձեզ գանձս յերկինս. ուր ո՛չ ցեց՝ և ո՛չ ուտիճ

ուտիճ ապականեն՝ և ոչ գողք ական հատանեն և գողանան: 21 *Ուր ուր գանձք ձեր են՝ անդ և սիրտք ձեր եղիցին: 22 *Ճրագ մարմնոյ ակն է. եթէ ակն քո առատ է. ամ մարմինդ լուսաւոր եղիցի: 23 *Ապա եթէ ակն քո չար է՝ ամ մարմինդ խաւարին եղիցի: Իսկ արդ՝ եթէ լոյսդ որ 'ի քեզ է՝ խաւար է՝ խաւարն ո՞րչափ ևս: 24 *Ոչ ոք կարէ երկուց տերանց ծառայել. կամ զմին ատիցէ, և զմիւսն սիրեսցէ. կամ զմին մեծարեսցէ, և զմիւսն արհամարհեսցէ. ո՛չ կարէք Այ ծառայել և մամոնայի: 25 *Վասն այդորիկ ասեմ ձեզ՝ մի՛ հոգայք վասն ոգւոց ձերոց, զինչ ուտիցէք. և մի՛ վն մարմնոց ձերոց թէ զինչ ագանիցիք. ո՞չ ապաքէն ոգի առաւել է քան զկերակուր և մարմին քան զհանդերձ: 26 *Հայեցարո՛ւք 'ի թռչունս երկնից՝ զի ո՛չ վարեն. և ո՛չ հնձեն. և ո՛չ ժողովեն 'ի շտեմարանս. և հայրն ձեր երկնաւոր կերակրէ զնս. ո՞չ ապաքէն դուք առաւել էք քան զնոսա: 27 *Իսկ արդ՝ ո՛ 'ի ձէնջ առ հոգալ իւրում յաւելուլ կարիցէ 'ի հասակ իւր կանգուն մի: 28 *Եւ վասն հանդերձի զի՞ հոգայք. հայեցարո՛ւք 'ի շուշանն վայրենի՝ ո՛րպէս աճէ. ո՛չ ջանայ՝ և ո՛չ նիւթէ: 29 *Ասեմ ձեզ՝ զի և ո՛չ սողոմոն յամ փառսն իւրում զգեցաւ իբրև զմի 'ի նոցանէ: 30 *Իսկ եթէ զխոտն 'ի վայրի՝ որ այսօր է. և վաղիւն 'ի հնոց արկանի, Այ այնպէս զգեցուցանէ. ո՞րչափ ևս առաւել զձեզ թերահաւատք: 31 *Մի՛ այսուհետև հոգայցէք, և ասիցէք. զի՞նչ կերիցուք՝ կամ զի՞նչ արբցուք. կամ զի՞նչ զգեցցուք: 32 *Զի զայդ ամ հեթանոսք խնդրեն. քանզի գիտէ հայրն ձեր երկնաւոր՝ թէ պիտոյ է ձեզ այդ ամ: 33 *Խնդրեցէք նախ զարքայութիւն Այ՝ և զարդարութիւն նր՝ և այդ ամ յաւելցի ձեզ: 34 *Մի՛ այսուհետև հոգայցէք վն վաղուին, զի վաղիւն վն իւր հոգասցէ. շատ է աւուրն չար իւր:

# ԳԼ: Է:

1 Մի՛ դատէք՝ զի մի՛ դատիցիք: 2 *Զի որով դատաստանաւ դատէք՝ դատելոց էք. և որով չափով չափէք, չափեսցի ձեզ: 3 *Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քոյ. և 'ի քում ականդ զգերանդ ո՛չ տեսանես: 4 *Կամ զիա՞րդ ասես ցեղբայր քո՝ թո՛ղ հանից զշիւղդ յականէ քումմէ. և ահաւադիկ 'ի քում ականդ գերան կայ: 5 *Կեղծաւոր. հա՛ն նախ զգերանդ յականէ քումմէ՝ և ապա հայեսցիս հանել զշիւղն յականէ եղբօր քոյ: 6 *Մի՛ տայք զսրբութիւն շանց՝ և մի՛ արկանէք զմարգարիտս ձեր առաջի խոզաց. զի մի՛ առոտն կոխեսցեն զնոսա՝ և դարձեալ երդիծուցանիցեն զձեզ: 7 *Խնդրեցէք, և տացի ձեզ. հայցեցէք և գտջիք. բախեցէք, և բացցի ձեզ: 8 *Զի ամ որ խնդրէ, առնու. և որ հայցէ, գտանէ. և որ բախէ, բացցի նմա: 9 *Ո՞վ իցէ 'ի ձէնջ մարդ՝ ցոր խնդրիցէ որդի իւր հաց, միթէ քա՛ր տայցէ նմա: 10 *Կամ խնդրիցէ ձուկն, միթէ օձ տայցէ նմա: 11 *Արդ եթէ դուք՝ որք չարքդ էք՝ գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց. ո՞րչափ ևս առաւել հայրն ձեր՝ որ յերկինս է՝ տայցէ բարիս այնոցիկ՝ որք խնդրեն զնա: 12 *Զամ զոր միանգամ կամիցիք՝ թէ արասցեն ձեզ մարդիկ՝ այնպէս արարէք և դուք նց. զի այն իսկ են օրէնքն և մարգարէք: 13 *Մտէք ընդ նեղ դուռն՝ քանզի ընդարձակ է դուռն՝ և համարձակ ճանապարհն՝ որ տանի 'ի կորուստ. և բազումք են՝ որք մտանեն ընդ նա: 14 *Քանզի անձուկ է դուռն. և նեղ ճանապարհն՝ որ տանի 'ի կեանս. և սակաւք են՝ որք գտանեն զնա: 15 *Զգո՛յշ լերուք 'ի սուտ մարգարէից՝ որք գան առ ձեզ հանդերձիւք ոչխարաց՝ և 'ի ներքոյ են գայլք յափշտակողք: 16 *'Ի պտղոյ նց ծանիջիք զնս. միթէ քաղիցեն 'ի փշոյ խաղող՝ կամ 'ի տատասկէ թուզ: 17 *Այնպէս ամ ծառ բարի՝ պտուղ բարի առնէ. և ծառ չար՝ պտուղ չար առնէ: 18 *Ո՛չ կարէ ծառ բարի զպտուղ չար առնել. և ո՛չ ծառ չար զպտուղ բարի առնել: 19 *Ամենայն ծառ՝ որ ոչ առնէ զպտուղ բարի. հատանի և 'ի հուր արկանի: 20 *Ապա 'ի պտղոյ նց ծանիջիք զնոսա: 21 *Ո՛չ ամենայն որ ասէ ցիս՝ Տր՝ Տր. մտցէ յարքայութիւն երկնից. այլ որ առնէ զկամս հօր իմոյ՝ որ յերկինս է: 22 *Բազումք ասիցեն ցիս յաւուր յայն մի՛՝ Տր՝ Տր. ո՞չ յանուն քո մարգարէացաք. և յանուն քո դևս հանաք. և յանուն քո զօրութիւնս բազումս արարաք: 23 *Եւ յայնժամ ասացից ցնոսա՝ եթէ ո՛չ երբէք գիտէի զձեզ. 'ի բա՛ց կացէք յինէն ամենեքեան՝ ոյք գործէք զանօրէնութիւն: 24 *Ամ որ լսէ զբանս իմ զայսոսիկ, և առնէ զնոսա՝ նմանեսցի առն իմաստնոյ. որ շինեաց զտուն իւր 'ի վն վիմի: 25 *Իջին անձրևք՝ և խաղացին գետք՝ շնչեցին հողմք՝ և բախեցին զտունն՝ և ոչ կործանեցաւ՝ քանզի 'ի վն վիմի հաստատեալ էր: 26 *Եւ ամ որ լսէ զբանս իմ զայսոսիկ՝ և ո՛չ առնէ զնոսա՝ նմանեսցի առն

յիմարի՝ որ շինեաց զտուն իւր ՚ի վերայ աւազոյ: 27 Իջին անձրեւք՝ յարեան գետք՝ շնչեցին հողմք՝ հարին զտունն՝ եւ անկաւ. եւ էր կործանումն նորա մեծ յոյժ: 28 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս զբանս զայսոսիկ՝ զարմանային ժողովուրդքն ընդ վարդապետութիւն նորա: 29 Զի իբրեւ իշխանութեամբ ուսուցանէր՝ եւ ոչ որպէս դպիրքն եւ փարիսեցիքն:

## ԳԼ. Ը.

1 Եւ իբրեւ էջ ՚ի լեռնէ անտի, գնային զկնի նորա ժողովուրդք բազումք: 2 Եւ ահա մատուցեալ բորոտ մի, երկիր պագանէր նմա՝ եւ ասէր. Տէր, եթէ կամիս՝ կարող ես զիս սրբել: 3 Ձգեաց զձեռն իւր՝ եւ հասոյց ՚ի նա Յիսուս՝ եւ ասէ. կամիմ, սրբեա՛ց, եւ վաղվաղակի սրբեցաւ ՚ի նմանէ բորոտութիւն: 4 Եւ ասէ ցնա Յիսուս՝ զգո՛յշ լեր՝ մի՛ ումեք ասիցես. այլ երթ ցո՛յց զանձն քո քահանային. եւ մատո՛ զպատարագն. զոր հրամայեաց Մովսէս ՚ի վկայութիւն նոցա: 5 Եւ մտեալ ՚ի կափառնաում, մատեաւ առ նա հարիւրապետ մի, աղաչէր զնա: 6 Եւ ասէր. Տէր՝ մանուկ իմ՝ անկեալ կայ ՚ի տան անդամալոյծ՝ չարաչար տանջեալ: 7 Ասէ ցնա Յիսուս. ես եկից՝ եւ բժշկեցից զնա: 8 Պատասխանի ետ հարիւրապետն՝ եւ ասէ. Տէր՝ չեմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով մտցես. այլ ասա՛ բանիւ, եւ բժշկեսցի մանուկն իմ: 9 Զի եւ ես այր մի եմ ընդ իշխանութեամբ. ունիմ ընդ ինեւ զինուորս՝ ասեմ սմա երթ, եւ երթայ. եւ այլում թէ եկ, եւ գայ. եւ ծառայի իմում թէ արա՛ զայս. եւ առնէ: 10 Իբրեւ լուաւ Յիսուս՝ զարմացաւ՝ եւ ասէ ցայնոսիկ որք զհետն երթային. ամէն ասեմ ձեզ՝ եւ ոչ յԻսրայէլի այսպիսի հաւատս գտի երբէք: 11 Բայց ասեմ ձեզ. զի բազումք յարեւելից եւ յարեւմտից եկեսցեն՝ եւ բազմեսցին ընդ աբրահամու՝ եւ ընդ իսահակայ՝ եւ ընդ յակոբու յարքայութեան երկնից: 12 Եւ որդիքն արքայութեան ելցեն ՚ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց: 13 Եւ ասէ Յիսուս ցհարիւրապետն՝ երթ. եւ որպէս հաւատացերդ, եղիցի քեզ. եւ ողջացաւ մանուկն նորա յաւուր յայնմիկ: 14 Եւ եկեալ Յիսուս ՚ի տուն պետրոսի. ետես՝ զի զոքանչ նորա անկեալ դնիւր տապացեալ: 15 Կալաւ զձեռանէ նորա՝ եւ եթող զնա ջերմն. յոտն եկաց՝ եւ պաշտէր զնա: 16 Իբրեւ երեկոյ եղեւ՝ մատուցին առ նա դիւահարս բազումս. եւ եհան զայսսն բանիւ. եւ զամենայն հիւանդս բժշկեաց: 17 Զի լցցի բանն՝ որ ասացաւ ՚ի ձեռն Եսայեայ մարգարէի. նա զհիւանդութիւնս մեր վերացոյց՝ եւ զցաւս մեր եբարձ: 18 Տեսեալ Յիսուսի զժողովս բազումս զիւրեւ՝ հրամայեաց երթալ յայնկոյս: 19 Եւ մատուցեալ դպիր մի ասէ ցնա. վարդապետ՝ եկից եւ ես զկնի քո՝ յոր վայր եւ երթիցես: 20 Ասէ ցնա Յիսուս. աղուեսուց որջք գոն՝ եւ թռչնոց երկնից բոյնք. այլ որդւոյ մարդոյ ոչ գոյ, ուր դիցէ զգլուխ իւր: 21 Եւ միւսն յաշակերտաց նորա ասէ. Տէր՝ տուր ինձ հրաման՝ զի երթայց նախ թաղեցից զհայր իմ: 22 Ասէ ցնա Յիսուս. եկ զկնի իմ. եւ թո՛յլ տուր մեռելոցն թաղել զմեռեալս իւրեանց: 23 Եւ իբրեւ եմուտ ՚ի նաւն. գնացին զկնի նորա աշակերտքն նորա: 24 Եւ ահա շարժումն մեծ եղեւ ՚ի ծովուն. մինչեւ նաւին ծածկիլ յալեաց անտի. եւ ինքն ննջէր: 25 Եւ մատուցեալ աշակերտքն յարուցին զնա՝ եւ ասեն. Տէր՝ փրկեա՛ զմեզ՝ զի կորնչիմք: 26 Եւ ասէ ցնոսա՝ ընդէ՞ր վատասիրտք էք՝ սակաւահաւատք. յայնժամ յարուցեալ սաստեաց հողմոյն եւ ծովուն. եւ եղեւ խաղաղութիւն մեծ: 27 Եւ մարդիկն զարմացան՝ եւ ասէին. ո՞րպիսի ոք իցէ սա՝ զի եւ հողմք եւ ծով հնազանդին սմա: 28 Եւ իբրեւ եկն յայնկոյս յերկիրն գերգեսացւոց՝



պատահեցան նմա դիւահարք երկու ելեալք ՚ի գերեզմանացն չարաչարք

չարք յոյժ. որպէս զի չէր հնար անցանել ուրեք ընդ այն ճանապարհ։ 29 *Եւ ահա աղաղակեցին՝ եւ ասեն. զի՞ կայ մեր եւ քո Յս՟ որդի Այ՟. եկիր տարաժամ տանջել զմեզ։ 30 *Եւ էր հեռագոյն 'ի նոցանէ երամակ մի խոզից արօտական։ 31 *Եւ դեւքն աղաչէին զնա՝ եւ ասէին. եթէ հանես զմեզ աստի, հրամա՛ն տուր մեզ երթալ յերամակ խոզիցն։ 32 *Եւ ասէ ցնոսա՝ երթա՛յք. եւ նոքա ելեալ գնացին յերամակն խոզից։ եւ դիմեաց ամենայն երամակն 'ի դարէ անտի 'ի ծով՝ եւ մեռան 'ի ջուրսն։ 33 *Եւ խոզարածքն փախեան. եւ երթեալ 'ի քաղաքն պատմեցին զամ՟, եւ զիրս դիւահարացն։ 34 *Եւ ահա ամ՟ քաղաքն ել ընդ առաջ Յի՟. եւ իբրեւ տեսին զնա, աղաչէին, զի գնասցէ 'ի սահմանաց նոցա։

Մարկ. 5.11. Ղուկ. 8.32. Մարկ. 5.17. Ղուկ. 8.37.

Գլ: Թ.

Եւ մտեալ 'ի նաւ՝ էանց յայնկոյս՝ 1 եւ եկն 'ի քաղաք իւր։ 2 *Եւ ահա մատուցին առ նա անդամալոյծ մի, որ դնիւր 'ի մահիճս։ եւ տեսեալ Յիսուսի զհաւատս նոցա՝ ասէ ցանդամալոյծն՝ թողեալ լիցին քեզ մեղք քո։ 3 *Եւ ահա ոմանք 'ի դպրացն ասեն ը՟ միտս՝ հայհոյէ դա։ 4 *Եւ ծանուցեալ Յի՟ զխորհուրդս նց՟՝ ասէ ցնս՟. ընդէ՞ր խորհիք դուք չարիս 'ի սիրտս ձեր։ 5 *Զի՞նչ դիւրին է ասել. թողեալ լիցին քեզ մեղք քո, թէ ասել՝ արի եւ շրջեաց։ 6 *Այլ զի գիտասջիք՝ եթէ իշխանութի՟ ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս. յայնժամ ասէ ցանդամալոյծն՝ արի՛, ա՛ռ զմահիճս քո՝ եւ երթ 'ի տուն քո։ 7 *Եւ յարուցեալ գնաց 'ի տուն իւր։ 8 *Իբրեւ տեսին ժողովուրդքն, զարմացան. եւ փառաւոր առնէին զԱծ՟ զտուօղ այնպիսի իշխանութե՟ մարդկան։ 9 *Եւ անցեալ ընդ այն Յի՟ ետես զայր մի. զի նստէր 'ի մաքսաւորութե՟ մատթէոս անուն. եւ ասէ ցնա՝ եկ զկնի իմ։ եւ յարուցեալ գնաց զկնի նր՟։ 10 *Եւ եղեւ իբրեւ բազմեալ էր նա 'ի տան. եւ ահա բազում մաքսաւորք եւ մեղաւորք եկեալ եւ բազմեալ էին ընդ Յի՟ եւ ընդ աշակերտս նր՟։ 11 *Իբրեւ տեսին փարիսեցիքն՝ ասեն ցաշակերտս նր՟. ընդէ՞ր ը՟ մաքսաւորս եւ ընդ մեղաւորս ուտէ վարդապետն ձեր։ 12 *Իսկ Յս՟ իբրեւ լուաւ՝ ասէ ցնս՟. ոչ պիտոյ է բժիշկ կարողաց՝ այլ հիւանդաց։ 13 *Երթա՛յք, ուսարուք զինչ է. ողորմութի՟ կամիմ, եւ ոչ զզոհ։ զի ոչ եկի կոչել զարդարս՝ այլ զմեղաւորս։ 14 *Յայնժամ

Մարկ. 2.3. Ղուկ. 5.18. Գ.Ա. Մարկ. 2.14. Ղուկ. 5.27. Ովսէէ. 6.6. Մատ. 12.7. Ա.Տիմ. 1.15.



մատեան առ նա աշակերտքն յովհաննու եւ ասեն. ընդէ՞ր մեք եւ փարիսեցիքն պահեմք յաճախ՝ եւ քո աշակերտքդ ոչ պահեն։ 15 *Ասէ ցնս՟ Յս՟, միթէ մարթ ինչ իցէ մանկանց առագաստի սուգ առնուլ՝ մինչ փեսայն ը՟ նոսա իցէ. այլ եկեսցեն աւուրք՝ յորժամ բարձցի 'ի նոցանէ փեսայն, եւ ապա պահեսցեն։ 16 *Ոչ ո՛ք արկանէ կապերտ անթափ 'ի վր՟ հնացեալ ձորձոյ. զի առնու ելանէ զլրութի՟ նր՟ 'ի հանդերձէն. եւ եւս չար պատառումն լինի։ 17 *Եւ ոչ ո՛ք արկանէ գինի նոր 'ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ տիկքն պատառին՝ եւ գինին հեղանի. եւ տիկքն կորնչին։ այլ արկանեն զգինի նոր 'ի տիկս նորս՝ 18 եւ երկոքին պահին։ *Մինչ դեռ նա զայս խօսէր ընդ նոսա՝ ահա իշխան մի մատուցեալ երկիր պագանէր նմա՝ եւ ասէր՝ դուստր իմ արդ եւս վախճանեցաւ. այլ եկեալ դիցես զձեռն քո 'ի 19 վերայ նր՟ եւ կեցցէ։ *Յարեաւ Յս՟ եւ գնաց զկնի նր՟ աշակերտօքն հանդերձ։ 20 *Եւ ահա կին մի տեռատես երկոտասանամեայ՝ մատուցեալ յետոյ մերձեցաւ 'ի դրօշակ հանդերձի նորա։ 21 *Ասէր 'ի միտ իւրում. թէ միայն մերձենամ 'ի հանդերձս նորա՝ 22 փրկիմ։ *Իսկ Յս՟ իբրեւ դարձաւ՝ եւ ետես զնա՝ ասէ. քաջալերեա՛յ դուստր՝ հաւատք քո կեցուցին զքեզ. եւ փրկեցաւ կինն 'ի ժամէն յայնմանէ։ 23 *Իբրեւ եկն Յս՟ 'ի տուն իշխանին. եւ ետես զփողահարսն եւ զամբոխ յոյժ. 24 ասէ ցնոսա. 'ի բա՛ց գնացէք։ *Զի ոչ եթէ մեռեալ է աղջիկդ՝ այլ ննջէ։ 25 *Եւ ծաղր առնէին զնա. եւ իբրեւ ել ամբոխն 'ի բաց, եմուտ, կալաւ զձեռանէ նորա. եւ յարեաւ աղջիկն։ 26 *Եւ ել համբաւս այս ընդ ամենայն 27 երկիրն ընդ այն։ *Եւ մինչդեռ անցանէր ընդ այն Յս՟. զհետ եղեն նորա կոյրք երկու՝ աղաղակէին՝ եւ ասէին. 28 ողորմեա՛յ մեզ որդի դաւթի։ *Եւ իբրեւ եկն 'ի տուն, մատեան առ նա կոյրքն. եւ ասէ ցնոսա Յս՟. հաւատա՞յք, եթէ կարող եմ առնել ձեզ զայդ։ 29 ասեն ցնա՝ այո՛ Տր՟։ *Յայնժամ մերձեցաւ յաչս նոցա՝ եւ ասէ. ըստ հաւատոյ ձերոյ եղիցի ձեզ։ 30 *Եւ բացան աչք նոցա. եւ սաստեաց նոցա Յս՟ եւ ասէ. զգո՛յշ կացէք՝ մի՛ ոք գիտասցէ։ 31 *Եւ նոքա ելեալ համբաւեցին զնա 32 ընդ ամ՟ երկիրն ընդ այն։ *Եւ յելանելն նց՟ արտաքս՝ ահա մատուցին առ նա զայր մի համր դիւահար։ 33 *Եւ յելանել դիւին՝ խօսեցաւ համրն. եւ զարմացան ժողովուրդքն՝ եւ ասեն.

Մարկ. 2.18. Ղուկ. 5.33. Գ.Գ. Մարկ. 5.22. Ղուկ. 8.41. Մարկ. 5.25. Ղուկ. 8.43. Գ.Գ. Մատ. 12.22. Ղուկ. 11.14.

թէ և ո՛չ երբէք երևեցաւ այսպիսի ինչ յԻՍՐԱՅԷԼԻ։ * Իսկ փարիսեցիքն ասէին. 34
թէ իշխանաւն դիւաց հանէ դա զդևս։
*Եւ շրջէր Յիսուս ընդ ամ քաղաքս, և 35
ըն գիւղս. ուսուցանէր 'ի ժողովուրդս
նոցա. և քարոզէր զաւետարանն արքայութեան. և բժշկէր զամ ախտս. և
զամ հիւանդութիւնս 'ի ժողովրդեանն։
*Եւ տեսեալ զժողովուրդսն՝ գթացաւ 'ի նոսա. զի էին աշխատեալք իբրև 36
զոչխարս, որոց ո՛չ իցէ հովիւ։
*Յայնժամ ասէ ցաշակերտսն իւր. 37
Հունձք բազում են՝ և մշակք սակաւք։
*Արդ՝ աղաչեցէք զՏր հնձոց՝ զի հան 38
ցէ մշակս 'ի հունձս իւր։

## Գլ։ Ժ․

Եւ կոչեալ առ ինքն զերկոտասան 1
աշակերտսն իւր. ետ նոցա իշխանութիւն այսոց պղծոց հանել զնոսա՝ և բժշկել զամ ախտս՝ և զամ հիւանդութիւնս։
*Եւ առաքելոցն երկոտասանից էին 2
անուանք այսոքիկ։ առաջին Սիմոն
անուանեալն Պետրոս. և Անդրէաս
եղբայր նր։ *Յակոբոս զեբեդեայ՝ և 3
Յօհաննէս եղբայր նր։ Փիլիպպոս՝
և Բարթուղիմէոս։ Թովմաս՝ և Մատթէոս մաքսաւոր։ Յակոբոս ալփեայ՝
և Ղ եբէոս, որ անուանեցաւ Թադէոս։ *Սիմոն կանանացի. և Յուդա 4
իսկարիովտացի՝ որ և մատնեաց զնա։
* Զնոսա երկոտասանեսին առաքեաց 5
Յս՝ պատուիրեաց նց, և ասէ։ 'ի ճանա
պարհս հեթանոսաց մի երթայցէք. և
'ի քաղաքս սամարացւոց մի մտանիցէք։
*Այլ երթայք առաւել առ ոչխարս 6
կորուսեալս տանն Իղի։ *Եւ իբրև եր 7
թայցէք՝ քարոզեցէք՝ և ասացէք՝ թէ
մերձեալ է արքայութիւն երկնից։
* Զհիւանդս բժշկեցէք։ զմեռեալս յա 8
րուցէք։ զբորոտս սրբեցէք։ զդևս հանէք։ ձրի առիք՝ և
ձրի տուք։ * Մի՛ ստանայք ոսկի՝ և 9
մի՛ արծաթ՝ և մի՛ պղինձ 'ի գօտիս ձեր։
*Մի՛ պարկ 'ի ճանապարհ։ և մի՛ եր 10
կուս հանդերձս։ մի՛ կօշիկս։ մի՛ ցուպս։
զի արժանի է մշակն կերակրոյ իւրոյ։
*Յոր քաղաք մտանիցէք կամ 'ի գեօղ, 11
հարցանիցէք թէ ո՛ է 'ի նմա արժանի.
և անդ լինիջիք՝ մինչև ելանիցէք անտի։ *Եւ իբրև մտանիցէք 'ի տունն, 12
ողջոյն տաջիք նմա՝ և ասասջիք։ ողջոյն տանս այսմիկ։ *Եւ թէ իցէ տունն 13
արժանի, եկեսցէ ողջոյնն ձեր 'ի վր
նր. ապա թէ ոչ իցէ արժանի, ողջոյնն
ձեր առ ձեզ դարձցի։ *Եւ որ ո՛չ ըն 14
կալցի զձեզ. և ո՛չ լուիցէ բանից ձերոց՝ իբրև ելանիցէք 'ի տանէն կամ
'ի քաղաքէն յայնմանէ, թօթափեսջիք

15 զփոշին յոտից ձերոց։ *Ամէն ասեմ
ձեզ՝ դիւրագոյն լիցի երկրին սոդոմացւոց և գոմորայեցւոց յաւուրն դատաստանի՝ քան քաղաքին այնմիկ։
16 *Ահաւասիկ ես առաքեմ զձեզ իբրև
զոչխարս 'ի մէջ գայլոց։ եղերուք այսուհետև խորագէտք իբրև զօձս. և
17 միամիտք իբրև զաղաւնիս։ *Զգոյշ
լինիջիք 'ի մարդկանէ։ զի մատնեսցեն զձեզ յատեանս. և 'ի ժողովուրդս
18 իւրեանց տանջեսցեն զձեզ։ *Եւ առաջի դատաւորաց և թագաւորաց
տանիցին զձեզ վն իմ 'ի վկայութիւն նց
19 և հեթանոսաց։ *Այլ յորժամ մատնեսցեն զձեզ, մի՛ հոգայցէք՝ թէ որպէս
20 կամ զինչ խօսիցիք†։ * Զի ո՛չ եթէ
դուք իցէք՝ որք խօսիցիքն. այլ հոգին
21 հօր ձերոյ՝ որ խօսիցի 'ի ձեզ։ *Մատնեսցէ եղբայր զեղբայր 'ի մահ՝ և հայր
զորդի։ և յառնիցեն որդիք 'ի վերայ
22 հարց՝ և սպանանիցեն զնս։ *Եւ եղիջիք ատեցեալք յամենեցունց վն անուան իմոյ։ իսկ որ համբերեսցէ ի
23 սպառ, նա կեցցէ։ *Եւ յորժամ հալածեսցեն զձեզ 'ի քաղաքիս յայսմիկ՝
փախիջիք յայլ։ և եթէ յայնմանէ հալածիցեն զձեզ, փախիջիք 'ի միւս։ ամէն ասեմ ձեզ՝ ո՛չ սպառեսջիք զքաղաքս Իղի՝ մինչև եկեսցէ որդի մարդոյ։
24 *Ոչ է աշակերտ առաւել քան զվարդապետ. և ո՛չ ծառայ քան զՏր իւր։
25 *Շատ իցէ աշակերտին՝ եթէ եղիցի
իբրև զվարդապետ իւր. և ծառային՝
իբրև զՏր իւր։ եթէ զտանուտէրն
բէեղզեբուղ կոչեցին. որչափ ևս ա-
26 ռաւել զընտանիս նր։ *Մի՛ այսուհետև երկնչիցիք 'ի նոցանէ։ զի ոչինչ է
'ի ծածուկ՝ որ ո՛չ յայտնեսցի. և գաղտնի, որ ո՛չ ծանիցի։ *Զոր ասեմ ձեզ
27 'ի խաւարի՝ ասացէք 'ի լոյս։ և զոր լսէք
յունկանէ, քարոզեցէք 'ի վր տանեաց։
28 *Եւ մի՛ երկնչիք յայնցանէ՝ որք սպանանեն զմարմին, և զոգի ո՛չ կարեն
սպանանել։ այլ երկերուք դուք առաւել յայնմանէ՝ որ կարող է զոգի և զմարմին կորուսանել 'ի գեհենի։ *Ո՛չ ա-
29 պաքէն երկու ճնճղուկք դանկի միոջ
վաճառին՝ և մի 'ի նոցանէ յերկիր ո՛չ
30 անկցի առանց հօր ձերոյ։ *Այլ ձեր
և ամենայն իսկ հեր գլխոյ թուեալ է։
31 *Եւ արդ՝ մի՛ երկնչիցիք՝ զի լաւ էք
32 քան զբազում ճնճղուկս։ *Ամենայն
որ խոստովանեսցի յիս առաջի մարդկան, խոստովանեցայց և ես զնմանէ
առաջի հօր իմոյ՝ որ յերկինս է։
33 *Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց և ես զնա առաջի հօր
34 իմոյ՝ որ յերկինս է։ * Մի՛ համարիք
եթէ

եթէ եկի արկանել զխաղաղութիւն յերկիր. ոչ եկի արկանել զխաղաղութիւն, այլ զսուր: 35 *Զի եկի քակել ‖ զայր 'ի հօրէ իւրմէ. եւ զդուստր 'ի մօրէ իւրմէ. եւ զհարսն 'ի սկեսրէ իւրմէ: 36 *‖Եւ թշնամիք առն՝ ընտանիք իւր: 37 *‖Որ սիրէ զհայր կամ զմայր առաւել քան զիս՝ ոչ է ինձ արժանի. եւ որ սիրէ զուստր կամ զդուստր առաւել քան զիս՝ չէ ինձ արժանի:

‖ Ղուկ. 12.51. ‖ Միք. 7. 6. ‖ Ղուկ. 14.26.



38 *‖Եւ որ ոչ առնու զխաչ իւր՝ եւ գայ զկնի իմ, չէ ինձ արժանի: 39 *Որ գտանէ զանձն իւր, կորուսցէ զնա. ‖ եւ որ կորոյս զանձն իւր վն իմ, գտցէ զնա: 40 *Որ ընդունի զձեզ. զիս ընդունի. եւ որ զիս ընդունի, ընդունի զառաքիչն իմ: 41 *Որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ: եւ որ ընդունի զարդար յանուն արդարոյ՝ զվարձս արդարոյ առցէ: 42 *‖Եւ որ արբուսցէ միում 'ի փոքրկանցս յայսցանէ բաժակ մի ջուր ցուրտ միայն յանուն աշակերտի. ամէն ասեմ ձեզ՝ ոչ կորուսցէ զվարձս իւր:

‖ Մրկ. 8.34. Մտթ. 16.24. Ղուկ. 9.24. եւ 14. 27. եւ 17.33 ‖ Յօհ. 12.25. ‖ Մրկ. 9.40. Ղուկ. 10.16. Յօհան. 13.20.

## ԳԼ. ԺԱ.

ԳԼ.

1 Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յս զպատուէր երկոտասանից աշակերտացն իւրոց, գնաց անտի քարոզել եւ ուսուցանել 'ի քաղաքս նց: 2 *‖Իսկ Յօհաննէս իբրեւ լուաւ 'ի բանտին զգործսն Քի, առաքեաց 'ի ձեռն աշակերտացն իւրոց. 3 *Եւ ասէ ցնա. դու ես՝ որ գալոցն ես, եթէ այլում ակն կալցուք: 4 *Պատասխանի ետ Յս՝ եւ ասէ ցնոսա. գնացէք եւ պատմեցէք Յօհաննու, զոր լուայք եւ տեսէք: 5 *‖Կոյրք տեսանեն. կաղք գնան. բորոտք սրբին. եւ խուլք լսեն. եւ մեռեալք յառնեն. եւ աղքատք աւետարանին: 6 *Եւ երանեալ է՝ որ ոչ գայթագղեսցի յիս: 7 *‖Եւ իբրեւ նքա գնացին, սկսաւ Յս ասել ցժողովուրդն զՅօհաննէ. զի՞նչ ելիք տեսանել յանապատին. եղէգն շարժուն 'ի հողմոյ: 8 *Այլ զի՞նչ ելիք տեսանել, մարդ 'ի հանդերձս փափկութեն զգեցեալ. ահաւասիկ որք զփափուկսն զգեցեալք են՝ 'ի տունս թագաւորաց են: 9 *Այլ զի՞նչ ելիք տեսանել. մարգարէ. այո ասեմ ձեզ՝ եւ առաւելեւս քան զմարգարէ: 10 *Զի սա է՝ վասն որոյ գրեալն է՝ ‖ ահաւասիկ ես առաքեցից զհրեշտակ իմ առաջի երեսաց քոց՝ որ պատրաստեսցէ զճանապարհս քո առաջի քո: 11 *Ամէն ասեմ ձեզ՝ չէ յարուցեալ 'ի ծնունդս կանանց մեծ քան զՅօհաննէս մկրտիչ. բայց փոքրիկն յարքայութեն երկնից մեծ է քան զնա: 12 *Բայց յաւուրցն Յօհաննու մկրտչի մինչեւ ցայժմ՝ արքայութիւն երկնից բռնադատի՝ եւ բռունք յափշտակեն զնա: 13 *Զի ամ օրէնք եւ մարգարէք մինչեւ ցՅօհաննէս մարգարէացան: 14 *Եւ թէ կամիք ընդունել, ‖նա է Եղիա՛ 15 որ գալոցն է: *Որ ունիցի ականջս լսելոյ, 16 լուիցէ: *Ո՞ւմ նմանեցուցից զազգս զայս: նման է մանկտւոյ՝ որք նստիցին 'ի հրապարակս՝ կարդայցեն 17 զընկերս իւրեանց: *Եւ ասիցեն. փող հարաք ձեզ՝ եւ ոչ կաքաւեցիք. ողբացաք ձեզ՝ եւ ոչ կոծեցիք: 18 *Եկն Յօհաննէս, ոչ ուտէր՝ եւ ոչ ըմպէր. եւ ասեն՝ դեւ գոյ 'ի նմա: 19 *Եկն որդի մարդոյ՝ ուտէ եւ ըմպէ. եւ ասեն. ահա այր կերող եւ արբեցող՝ բարեկամ մաքսաւորաց եւ մեղաւորաց. եւ արդարացաւ իմաստութին յորդւոց 20 իւրոց: *Յայնժամ սկսաւ նախատել զքաղաքսն՝ յորս եղեն բազում զօրութիւնք նորա՝ եւ ոչ ապաշխարեցին: 21 *‖Վայ քեզ քորազին. վայ քեզ բեթսայիդա. զի եթէ 'ի տիւրոս եւ 'ի սիդոն եղեալ էին զօրութիւնքն՝ որք 'ի ձեզ եղեն, վաղուց եւս արդեօք խորգով եւ մոխրով ապաշխարեալ էր: 22 *Բայց ասեմ ձեզ՝ դիւրագոյն լիցի երկրին տիւրոսի եւ սիդոնի յաւուրն դատաստանի քան ձեզ: 23 *Եւ դու կափառնաում. մի՛ մինչեւ յերկինս բարձրացիր՝

‖ Ղուկ. 7.18. ‖ Եսայ. 35.5. եւ 61.1. ‖ Ղուկ. 7. 24. ‖ Մաղաք. 3. 1. Մրկ. 1. 2. Ղուկ. 7.27. ‖ Մաղաք. 4. 5. ‖ Ղուկ. 10. 13.

ապաշխարեալ էին:

ցիս՝ այլ մինչև 'ի դժոխս իջցես ։ զի եթէ 'ի սոդոմ եղեալ էին զօրութիւնքն՝ որք 'ի քեզ եղեն, ապաքէն կային ևս մինչև ցայսօր ։ 24 *Բայց ասեմ ձեզ՝ եթէ երկրին սոդոմացւոց դիւրագոյն լիցի յաւուրն դատաստանի՝ քան ձեզ ։

Գ·Կ

25 *Յայնմ ժամանակի պատասխանի ետ Յս՝ և ասէ ։ գոհանամ զքէն հայր՝ Տր երկնի և երկրի . զի ծածկեցեր զայս յիմաստնոց և 'ի գիտնոց՝ և յայտնեցեր տղայոց ։ 26 *Այո հայր ։ զի այսպէս հաճոյ եղև առաջի քո ։ 27 *Ամ ինչ տուաւ ինձ 'ի հօրէ իմմէ ։ ‖ և ոչոք ճանաչէ զորդի՝ եթէ ոչ հայր ։ և ոչ զհայր ոք ճանաչէ՝ եթէ ոչ որդի ։ և ում որդին կամիցի յայտնել ։ 28 *Եկայք առ իս ամ վաստակեալք և բեռնաւորք՝ և ես հանգուցից զձեզ ։ 29 *‖Առէք զլուծ իմ 'ի ձեզ ։ և ուսարուք յինէն՝ զի հեզ եմ . և խոնարհ սրտիւ ։ և գտջիք հանգիստ անձանց ձերոց ։ 30 *‖Զի լուծ իմ քաղցր է . և բեռն իմ փոքրոգի ։

‖Յօհ. 6.46. և 7.18. և 8.19. և 10.15. ‖Երեմ. 6.16. ‖1.Յօհ. 5. 3.

## ԳԼ: ԺԲ:

Գ·Ր

1 Յայնժամ ‖գնաց Յս ընդ արտորայսն նց 'ի շաբաթու ։ և աշակերտքն նր քաղցեան ։ և սկսան հասկ կորզել և ուտել ։ 2 *Փարիսեցիքն իբրև տեսին՝ ասեն ցնա ։ ահաւասիկ աշակերտքն քո գործեն . զոր ոչ է օրէն 'ի շաբաթու ։ 3 *Եւ նա ասէ ցնոսա . ո՞չ իցէ ընթերցեալ ձեր՝ ‖զոր արար դաւիթ . յորժամ քաղցեաւն . և որք ընդ նմայն էին ։ 4 *Զիա՞րդ եմուտ 'ի տունն Այ՝ և եկեր զհացն առաջաւորութեան ։ զոր ոչ էր օրէն նմա ուտել . և ոչ՝ որոց ընդ նմայն էին . ‖բայց միայն քահանայից ։ 5 *Կամ թէ չիցէ՞ ընթերցեալ յօրէնս՝ ‖ զի 'ի շաբաթս քահանայքն 'ի տաճարին պղծեն զշաբաթն՝ և անմեղք են ։ 6 *Բայց ասեմ ձեզ՝ զի մեծ քան զտաճարն է աստ ։ 7 *Եւ եթէ գիտէիք զինչ է՝ ‖զողորմութիւն կամիմ, և ոչ զզոհ ։ ապա ոչ դատապարտէիք դուք զանպարտսն ։ 8 *Զի Տէր է շաբաթու որդի մարդոյ ։ 9 *Եւ գնացեալ անտի Յս եկն 'ի ժողովուրդն նց ։ 10 *‖Եւ անդ էր այր մի . որոյ ձեռն գօսացեալ էր ։ հարցին զնա՝ և ասեն ։ եթէ պա՞րտ իցէ 'ի շաբաթու բժշկել . զի չարախօսեսցեն զնմանէ ։ 11 *Եւ նա ասէ ցնոսա . ‖ո՞վ է 'ի ձէնջ մարդ . որոյ իցէ ոչխար մի . և անկանիցի այն 'ի խորխորատ 'ի շաբաթու . միթէ ո՞չ ունիցի՝ և յարուցանիցէ զնա ։ 12 *Իսկ արդ ո՞րչափ ևս առաւելէ մարդ քան զոչխար ։ ապա ուրեմն պարտ է 'ի շաբաթու բարիս գործել ։ 13 *Յայնժամ ասէ ցայրն . ձգեա զձեռն քո . և նա ձգեաց . և եղև ողջ իբրև զմիւսն ։ 14 *Իսկ փարիսեցիքն ելեալ արտաքս՝ խորհուրդ առին զնմանէ . թէ որպ կորուսցեն զնա ։ 15 *Եւ Յս իբրև գիտաց , մեկնեցաւ անտի ։ և գնացին զհետ նր ժողովուրդքն՝ և բժշկեաց զամենեսեան ։ 16 *Եւ սաստեաց նց՝ զի մի յայտնեսցեն զնմանէ ումեք ։ 17 *Զի լցցի , որ ասացաւն 'ի ձեռն եսայեայ մարգարէի ։ 18 *‖Ահա մանուկ ‖իմ՝ զոր ընտրեցի . և սիրելի իմ՝ ընդ որ հաճեցաւ անձն իմ ։ եդից զոգի իմ 'ի վր նորա . և իրաւունս հեթանոսաց պատմեսցէ ։ 19 *Ոչ հակառակեսցի՝ և ոչ աղաղակեսցէ . և ոչոք լուիցէ 'ի հրապարակս զբարբառ նր ։ 20 *Զեղէգն ջախջախեալ ոչ փշրեսցէ՝ և զպատրոյգն առկայծեալ ոչ շիջուսցէ . մինչև հանցէ 'ի յաղթութիւն զդատաստան ։ 21 *Եւ յանուն նր հեթանոսք յուսասցին ։

‖Մարկ. 2. 23. Ղուկ. 6. 1. ‖1 Թագ. 21.4. ‖Ղևտ. 24. 8. ‖Թուոց 28. 9. ‖Ովսէ. 6. 6. ‖Մարկ. 3. 1. Ղուկ. 6. 6. ‖2. Օրէ 22.4. ‖Եսայ. 42. 1.

Գ·Գ

22 *Յայնժամ մատուցաւ առ նա դիւահար մի կոյր՝ և համր . և բժշկեաց զնա . որպ զի համրն՝ և կոյրն խօսիցի և տեսանիցէ ։ 23 *Զարմացան ամ ժողովուրդքն՝ և ասեն . միթէ սա՞ իցէ որդին դաւթի ։ 24 *‖Բայց փարիսեցիքն իբրև լուան՝ ասեն ։ ոչ իւիք հանէ դա զդևս՝ եթէ ոչ բէեղզեբուղաւ իշխանաւն դիւաց ։ 25 *Իբրև գիտաց Յս զխորհուրդս նց՝ ասէ ցնոսա . ‖ամ թագաւորութիւն բաժանեալ յանձն իւր՝ աւերի . և ամ քաղաք, կամ տուն բաժանեալ յանձն իւր՝ ոչ կացցէ ։ 26 *Եւ եթէ սատանայ զսատանայ հանէ՝ յանձն իւր բաժանեցաւ . արդ զիա՞րդ կացցէ թագաւորութիւն նորա ։ 27 *Եւ եթէ ես բէեղզեբուղաւ հանեմ զդևս՝ որդիքն ձեր իւ հանիցեն . վն այսորիկ նոքա եղիցին ձեր դատաւորք ։ 28 *Ապա թէ հոգւով Այ հանեմ զդևս՝ ուրեմն հասեալ է 'ի վերայ ձեր արքայութիւն Այ ։ 29 *Կամ զիա՞րդ կարէ ոք մտանել 'ի տուն հզօրի՝ և զգործիս նր յափշտակել . եթէ ոչ նախ կապիցէ զհզօրն՝ և ապա զտունն նր յափշտակիցէ ։ 30 *Որ ոչ ընդ իս է՝ հակառակ իմ է ։ և որ ոչ ժողովէ ընդ իս, ցրուէ ։ 31 *‖Վն այդորիկ ասեմ ձեզ . ամ մեղք և հայհոյութիւնք թողցին մարդկան ։ բայց հոգւոյն հայհոյութիւն մի թողցի ։ 32 *Եւ որոք ասիցէ բան զորդւոյ մարդոյ՝ թողցի նմա . բայց որ զհոգւոյն սրբոյ ասիցէ մի թողցի նմա . մի յայսմ աշխարհի . և մի 'ի հանդերձելումն ։ 33 *Կամ արարէք զծառն բարի և զպտուղ նորա բարի . կամ արարէք զծառն չար՝ և զպտուղ նր չար ։ քանզի ‖'ի պտղոյ անտի ծառն ճանաչի ։ 34 *Ծնունդք իժից .

‖Մարկ. 3.22. Ղուկ. 11. 15. ‖Մարկ. 9.34. ‖Ղուկ. 11.17. ‖Մարկ. 3.28. Ղուկ. 12.10. ‖Ղուկ. 6.44.

իմիք. զիա՞րդ կարիցէք բարիս խօսիլ՝ որք չարքդ էք. քանզի 'ի յաւելուածոյ սրտի խօսի բերան։ 35 *Մարդ բարի՝ 'ի բարի գանձուց սրտի իւրոյ հանէ զբարիս. և մարդ չար՝ 'ի չար գանձուց սրտի իւրոյ հանէ զչարիս։ 36 *Բայց ասեմ ձեզ. թէ ընդ ամ՛ դատարկ բանի զոր խօսիցին մարդիկ՝ տացեն համար յաւուրն դատաստանի։ 37 *Զի 'ի բանից քոց արդարասցիս. և 'ի բանից քոց պարտաւորեսցիս։

Դ.Դ.

38 *Յայնժամ պատասխանի ետուն նմ՛ ոմանք 'ի դպրացն և 'ի փարիսեցւոց՝ և ասեն. վարդապետ՝ կամիմք նշան ինչ տեսանել 'ի քէն։ 39 *Նա պատասխանի ետ՝ և ասէ ցնոսա. ազգ չար և շնացող նշան խնդրէ. և նշան մի՛ տացի նմա. բայց նշանն յովնանու մարգարէի։ 40 *Զի որպէս էր յովնան 'ի փոր կիտին զերիս տիւ և զերիս գիշերս. այնպէս եղիցի և որդի մարդոյ 'ի սիրտ երկրի զերիս տիւ և զերիս գիշերս։ 41 *Արք նինուէացիք յարիցեն 'ի դատաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ՝ և դատապարտեսցեն զսա՛ զի զղջացան 'ի քարոզութենն յովնանու. և արդ՝ աւասիկ մեծ քան զյովնան է աստ։ 42 *Դշխոյն հարաւոյ յարիցէ 'ի դատաստանի ընդ ազգիս ընդ այսմիկ՝ և դատապարտեսցէ զսա. զի եկն 'ի ծագաց երկրի լսել զիմաստութիւն սողոմոնի. և ահա մեծ քան զսողոմոն է աստ։ 43 *Յորժամ այսն պիղծ ելանէ 'ի մարդոյ՝ շրջի ընդ անջրդին տեղիս. խնդրէ հանգիստ՝ և ոչ գտանէ։ 44 *Յայնժամ ասէ՝ դարձայց 'ի տուն իմ՝ ուստի ելի. և եկեալ գտանէ զնա պարապորդ մաքրեալ և յարդարեալ։ 45 *Յայնժամ երթայ՝ և առնու ընդ իւր եօթն այլ այսս չարագոյնս քան զինքն՝ և մտեալ բնակի անդ. և լինին մարդոյն այնորիկ յետինքն չար քան զառաջինսն. այնպէս եղիցի և ազգիս այսմիկ չարի։ 46 *Մինչդեռ նա ընդ ժողովուրդսն խօսէր. ահա մայր նորա և եղբարք նորա կային արտաքոյ՝ և խնդրէին խօսիլ ընդ նմա։ 47 *Եւ ասէ ոմն ցնա. ահա մայր քո՝ և եղբարք քո կան արտաքոյ՝ և խնդրեն խօսիլ ընդ քեզ։ 48 *Նա պատասխանի ետ այնմիկ՝ որ ասացն ցնա. և ասէ. † ո՞վ են իմ եղբարք։ 49 *Եւ ձգեալ զձեռն իւր յաշակերտսն ասէ՝ ահա մայր իմ և եղբարք իմ։ 50 *Զի որ առնիցէ զկամս հօր իմոյ՝ որ յերկինսն է, նա է իմ եղբայր՝ և քոյր՝ և մայր։

## ԳԼ. ԺԳ.

Դ.Ե.

1 Յաւուր յայնմիկ ելեալ Յս՛ 'ի տանէն՝ նստաւ առ ծովեզերն։ 2 *Եւ ժողովեցան առ նա ժողովուրդք բազումք. մինչև մտանել նմա 'ի նաւ. և նստիլ. և ամ՛ ժողովուրդն կայր առ ծովեզերբն։ 3 *Եւ խօսէր ընդ նոսա բազում առակօք՝ և ասէր. 4 *Ահա ել սերմանահան սերմանել. և 'ի սերմանելն իւրում, էր որ անկաւ առ ճանապարհաւ՝ և եկն թռչուն երկնից՝ և եկեր զնա։ 5 *Եւ այլն անկաւ յապառաժի. ուր ոչ գոյր հող բազում. և վաղվաղակի բուսաւ՝ առ 'ի չգոյէ հիւթոյ երկրին։ 6 *Ի ծագել արևու տապացաւ. և զի ոչ գոյին արմատք, չորացաւ։ 7 *Եւ այլն անկաւ 'ի մէջ փշոց. և ելին փուշքն և հեղձուցին զնա։ 8 *Եւ այլն անկաւ յերկիր բարի. և տայր պտուղ. էր որ հարիւրաւոր. և էր որ վաթսնաւոր. և էր որ երեսնաւոր։ 9 *Որ ունիցի ականջս լսելոյ, լուիցէ։ 10 *Եւ մատուցեալ աշակերտքն ասեն ցնա. ընդէ՞ր առակօք խօսիս ընդ նոսա։ 11 *Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. քանզի ձեզ տուեալ է գիտել զխորհուրդ արքայութե՛ երկնից. և նց՛ չէ՛ տուեալ։ 12 *Զի որ ունիցի՝ տացի նմա և յաւելցի. և որ ոչն ունիցի, և զոր ունիցին, բարձցի 'ի նմանէ։ 13 *Վս՛ այդորիկ առակօք խօսիմ ընդ նոսա. զի տեսանեն՝ և ոչ տեսանեն. և լսեն՝ և ոչ լսեն՝ և ոչ առնուն 'ի միտ։ 14 *Եւ կատարի առ նոսա մարգարէութիւն եսայեայ՝ որ ասէ. լսելով լուիջիք՝ և մի՛ իմասջիք. և տեսանելով տեսջիք՝ և մի՛ տեսջիք։ 15 *Զի թանձրացաւ սիրտ ժողովրդեանս այսորիկ՝ և ականջօք իւրեանց ծանունս լուան. և զաչս իւրեանց կափուցին. զի մի՛ երբեք տեսցեն աչօք՝ և ականջօք լուիցեն. և սրտիւք իմասցին. և դարձցին, և բժշկեցից զնոսա։ 16 *Բայց ձեր երանի է աչաց՝ զի տեսանեն. և ականջաց ձերոց, զի լսեն։ 17 *Ամէն ասեմ ձեզ. զի բազում մարգարէք և արդարք ցանկացան տեսանել՝ զոր տեսանէքդ՝ և ոչ տեսին. և լսել՝ զոր լսէքդ՝ և ոչ լուան։ 18 *Եւ արդ՝ լուարուք դուք զառակ սերմանացանին։ 19 *Ամ՛ որ լսէ զբանն արքայութե՛ և ոչ առնու 'ի միտ. գայ չարն՝ և յափշտակէ զսերմանեալն 'ի սիրտ նորա. այն է՝ որ առ ճանապարհաւն սերմանեցաւ։ 20 *Եւ որ յապառաժին սերմանեցաւ, այն է՝ որ իբրև լսէ զբանն, և վաղվաղակի խնդութե՛ ընդունի զնա։ 21 *Բայց քանզի ոչ ունի ար-

---

Margin (left column): Մատ. 16.4. — Ղուկ. 11.29. — 1. Կոր. 1.22. — Յովն. 2.1. — Յովն. 3.5. — 3 Թագ. 10.1. — 2. Մնաց. 9.1. — Ղուկ. 11.24. — 2. Պետ. 2.20. — Մարկ. 3.31. — Ղուկ. 8.19. — † ո՞վ է իմ մայր, և

Margin (right column): Մարկ. 4.1. — Ղուկ. 8.4. — Մատ. 25.29. — Եսայ. 6.9. — Մարկ. 4.12. — Ղուկ. 8.10. և 11. — Յովհ. 12.40. — Գործ. 28.26. — Հռով. 11.8. — Ղուկ. 10.24.

վարմտս յինքեան. այլ առ ժամանակ մի է. 'ի լինել նեղութե և հալածանաց վն բանին' վաղվաղակի գայթագղի։ 22 * Իսկ որ 'ի մէջ փշոցն սերմանեցաւ' այն է' որ իբրև լսէ զբանն, և հոգք աշխարհիս, և պատրանք մեծութե հեղձուցանեն զբանն. և լինի անպտուղ։ 23 *Իսկ որ յերկիրն բարի սերմանեցաւ' այն է, որ իբրև լսէ զբանն, և 'ի միտ առնու. և տայ զպտուղ. է' որ հարիւր. և է' որ վաթսուն. և է' որ երեսուն։

Գ.Զ.
Մարկ. 4.26.

24 *Այլ առակ էարկ առ նոսա և ասէ։ նմանեցաւ արքայութի երկնից առն. որ սերմանիցէ զսերմն բարի յագարակի իւրում։ 25 *Եւ 'ի քուն լինել մարդկան. եկն թշնամին նր. և ցանեաց 'ի վր զորոմն 'ի մէջ ցորենոյն և գնաց։ 26 *Եւ իբրև բուսաւ խոտն' և արար զպտուղ, ապա երևեցաւ և որոմն։ 27 * Մատուցեալ ծառայք տանուտեառն ասեն ցնա։ Տր, ո՞չ սերմն բարի սերմանեցեր յագարակին քում։ արդ' ուստի՞ ունիցի զորոմն։ 28 * Եւ նա ասէ ցնոսա' այր թշնամի արար զայն։ ասեն ցնա ծառայքն. կամի՞ս, զի երթիցուք' քաղեսցուք զայն 'ի բաց։ 29 * Եւ նա ասէ ցնս' ոչ. գուցէ մինչ քաղիցէք զորոմն, և զցորեանն ընդ նմին 'ի բաց խլիցէք։ 30 * Թո՛յլ տուք երկոցունցն աճել 'ի միասին մինչև 'ի հունձս։ և 'ի ժամանակի հնձոցն ասացից ցհնձօղսն. քաղեցէ՛ք նախ զորոմն, և կապեցէ՛ք զայդ խուրձս առ 'ի այրել։ և զցորեանն ժողովեցէ՛ք 'ի շտեմարան իմ։

Մարկ. 4.30.
Ղուկ. 13. 18.

31 * Այլ առակ էարկ առ նոսա' և ասէ։ նման է արքայութի երկնից հատոյ մանանխոյ. զոր առեալ մարդոյ' սերմանեաց յագարակի իւրում։ 32 * Որ փոքր է քան զամ սերմանիս։ և յորժամ աճիցէ, մեծ է քան զամ բանջարս։ և լինի ծառ' մինչև գալ թռչնոց երկնից' և հանգչել յոստս նորա։

Ղուկ. 13. 21.

33 * Այլ առակ խօսեցաւ ընդ նոսա և ասէ։ նման է արքայութի երկնից խմորոյ. զոր առեալ կնոջ թաքոյց 'ի գրիւս երիս ալեր' մինչև ամ խմորեցաւ։ 34 * Զայս ամ խօսեցաւ Յս առակօք ընդ ժողովուրդսն. և առանց առակի ոչ ինչ խօսէր ընդ նոսա։

Սաղմ. 77.2.
Մարկ. 4.34.

35 * Զի լցցի ասացեալն 'ի մարգարէէն. Բացից առակօք զբերան իմ. բղխեցից զծածկեալսն 'ի սկզբանէ աշխարհի։

Գ.Է.

36 * Յայնժամ թողեալ Յի զժողովուրդսն, եկն 'ի տուն։ մատեան առ նա աշակերտքն նր' և ասեն. մեկնեա' մեզ զառակ որոմանցն ագարակի։ 37 * Նա պատասխանի ետ' և ասէ ցնոսա. որ սերմանէ զսերմն բարի' է որդի մարդոյ։ 38 *Եւ ագարակն աշխարհս է։ սերմն բարի նոքա են, որք որդիքն արքայութե են. իսկ որոմն որդիք չարին են։ 39 * Եւ թշնամին որ վարեաց զայն, սատանայ է։ և հունձն կատարած աշխարհիս է. և հնձօղքն հրեշտակք են։

Յայտ. 14. 15.

40 * Որպէս ժողովի որոմն և 'ի հուր այրի. այնպէս եղիցի 'ի կատարածի աշխարհիս։ 41 * Առաքեսցէ որդի մարդոյ զհրեշտակս իւր. և ժողովեսցեն յարքայութէ նորա զամ գայթագղութիս' և զայնոսիկ որք գործեն զանօրէնութի։ 42 * Եւ արկցեն զնոսա 'ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ' և կրճել ատամանց։

Իմաս. 3. 7.
Դան. 12.3.

43 * Յայնժամ արդարքն ծագեսցին իբրև զարեգակն յարքայութե երկնից. որ ունիցի ականջս լսել լո՛ւ' լուիցէ։ 44 * Դարձեալ' նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի' զոր գտեալ մարդոյ թաքոյց' և 'ի խնդութէ անտի երթայ վաճառէ զամ ինչ' զոր ունի. և գնէ զագարակն զայն։ 45 * Դարձեալ' նման է արքայուի երկնից առն վաճառականի որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս։ 46 *Եւ գտեալ մի պատուական մարգարիտ' երթեալ վաճառեաց զամ զոր ինչ ունէր' և գնեաց զայն մարգարիտ։ 47 *Դարձեալ' նման է արքայութի երկնից ուռկանի արկելոյ 'ի ծով' և յամ ազգաց ժողովելոյ։ 48 * Որ իբրև լցաւ, հանեալ 'ի ցամաք' և նստեալ ժողովեցին զբարիբարին յամանս' և զխոտանն 'ի բաց ընկեցին։ 49 * Այնպէս եղիցի 'ի կատարածի աշխարհիս. ելցեն հրեշտակք' և մեկնեսցեն զչարս 'ի միջոյ արդարոց։ 50 * Եւ արկցեն զնոսա 'ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ 51 * Ասէ ցնոսա Յս' իմացայ՞ք զայս ամ. ասեն ցնա. այո՞ Տր։ 52 * Եւ նա ասէ ցնոսա' վասն այսորիկ' ամ դպիր աշակերտեալ արքայութե երկնից' նման է առն տանուտեառն, որ հանէ 'ի գանձէ իւրմէ զնոր և զհին։

Գ.Ը.

53 *Եւ եղև իբրև կատարեաց Յս զառակս զայսոսիկ' փոխեցաւ անտի։ 54 *Եւ եկեալ 'ի գաւառ իւր' ուսուցանէր զնս †։ մինչև զարմանալ նց և ասել։ ուստի՞ իցէ սմա այս իմաստութի և զօրութիք։

† 'ի ժողովրդեան

Մարկ. 6. 3.
Ղուկ. 4.16.
Յովհ. 6. 42.

55 * Ո՞չ սա է հիւսանն որդի' ո՞չ մայր սր կոչի Մարիամ. և եղբարք սորա յակոբոս. և յովսէս, և սիմոն' և յուդաս։ 56 *Եւ քորք սորա ամենեքեան առ մեզ են։ արդ ուստի՞ է սմա այս ամ։ 57 *Եւ գայթագղէին 'ի նա։ և Յս ասէ ցնոսա' չի՛ք մարգարէ անարգ' եթէ ոչ յիւրում գաւառի և յիւրում տան։ 58 *Եւ ոչ արար անդ զօրութիւնս բազումս վասն անհաւատութե նց։

ԳԼ։

## ԳԼ: ԺԴ.

1 Յայնմ ժամանակի լուաւ Հերովդէս չորրորդապետն զլուր Յիսուսի։ 2 Եւ ասէ ցծառայս իւր. Նա է Յովհաննէս մկրտիչ՝ նա յարեաւ ՚ի մեռելոց. եւ վասն այսորիկ զօրութիւնք լինին նովաւ։ 3 Քանզի Հերովդէս կալեալ զՅովհաննէս՝ կապեաց զնա եւ եդ ՚ի բանտի վասն Հերովդիադայ կնոջ Փիլիպպոսի եղբօր նորա։ 4 Զի ասէր ցնա Յովհաննէս՝ Չէ արժան քեզ ունել զդա։ 5 Եւ կամէր զնա սպանանել, բայց երկնչէր ՚ի ժողովրդենէ անտի, քանզի իբրեւ զմարգարէ ունէին զնա։ 6 Եւ իբրեւ եղեն ծնունդք Հերովդի՝ կաքաւեաց դուստրն Հերովդիադայ ՚ի մէջ բազմականացն. եւ հաճոյ թուեցաւ Հերովդի։ 7 Ուստի եւ երդմամբ խոստացաւ տալ նմա զինչ եւ խնդրեսցէ։ 8 Եւ նա յառաջագոյն խրատեալ ՚ի մօրէ իւրմէ. տուր ինձ ասէ այսր ՚ի վերայ սկտեղ զգլուխն Յովհաննու մկրտչի։ 9 Եւ տրտմեցաւ թագաւորն. բայց վասն երդմանցն եւ բազմականացն հրամայեաց տալ նմա։ 10 Եւ առաքեաց, գլխատեաց զՅովհաննէս ՚ի բանտի։ 11 Եւ բերաւ գլուխ նորա սկտեղբ՝ եւ տուաւ աղջկանն. եւ տարաւ առ մայր իւր։ 12 Եւ մատուցեալ աշակերտքն նորա՝ բարձին զմարմինն եւ թաղեցին. եւ եկեալ պատմեցին Յիսուսի։

13 Եւ իբրեւ լուաւ Յիսուս՝ գնաց անտի նաւու յանապատ տեղի առանձինն։ Իբրեւ լուան ժողովուրդքն, գնացին զհետ նորա հետի ՚ի քաղաքաց անտի։ 14 Եւ իբրեւ ել, ետես ժողովուրդ բազում. եւ գթացաւ ՚ի նոսա. եւ բժշկեաց զհիւանդս նոցա։ 15 Իբրեւ ընդ երեկս եղեւ, մատեան առ նա աշակերտքն եւ ասեն, տեղիս անապատ է՝ եւ օրս տարաժամեալ. արձակեա զժողովուրդդ՝ զի երթիցեն շուրջ ՚ի շէնսն՝ գնեսցեն իւրեանց կերակուրս։ 16 Եւ ասէ Յիսուս. ոչինչ պիտոյ է դոցա երթալ, դուք տուք դոցա ուտել։ 17 Եւ նոքա ասեն ցնա՝ ոչինչ ունիմք աստ. բայց հինգ նկանակ եւ երկու ձկունս։ 18 Եւ ասէ ցնոսա՝ բերէք այսր զայն։ 19 Եւ հրամայեաց բազմեցուցանել զժողովուրդսն, ՚ի վերայ խոտոյ. եւ առեալ զհինգ նկանակսն եւ զերկուս ձկունսն, հայեցաւ յերկինս, օրհնեաց եւ եբեկ, եւ ետ ցաշակերտսն զնկանակսն. եւ աշակերտքն ժողովրդոցն։ 20 Կերան ամենեքեան եւ յագեցան. եւ բարձին զնշխարս կոտորոցն երկոտասան սակառի լի։ 21 Եւ որք կերանն, էին արք իբրեւ հինգ հազար. թող զկանայս եւ զմանկտիս։

22 Եւ ստիպեաց վաղվաղակի զաշակերտսն մտանել ՚ի նաւ, եւ յառաջել յայնկոյս. մինչ ինքն զժողովուրդսն արձակիցէ։ 23 Եւ իբրեւ արձակեաց զժողովուրդսն, ել ՚ի լեառն առանձինն կալ յաղօթս. եւ իբրեւ ընդ երեկս եղեւ, անդ էր միայն։ 24 Եւ նաւն մեկնեալ էր ՚ի ցամաքէն բազում ասպարիսօք տատանեալ յալեացն. քանզի ընդդէմ էր հողմն։ 25 Եւ ՚ի չորրորդ պահու գիշերոյն եկն առ նոսա Յիսուս գնալով ՚ի վերայ ծովուն։ 26 Իբրեւ տեսին զնա աշակերտքն, զի գնայր ՚ի վերայ ծովուն, խռովեցան. եւ առ ահին աղաղակեցին։ 27 Եւ վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա Յիսուս եւ ասէ. քաջալերեցարուք՝ ես եմ, մի երկնչիք։



28 Պատասխանի ետ նմա Պետրոս՝ եւ ասէ՝ Տէր, եթէ դու ես, հրամայեա ինձ գալ առ քեզ ՚ի վերայ ջրոցս։ 29 Եւ նա ասէ՝ եկ. եւ իջեալ ՚ի նաւէն Պետրոս՝ գնայր ՚ի վերայ ջրոցն՝ եւ եկն առ Յիսուս։ 30 Եւ տեսեալ զհողմն սաստիկ՝ երկեաւ. եւ իբրեւ սկսաւ ընկղմել՝ աղաղակեաց, եւ ասէ. Տէր փրկեա զիս։ 31 Եւ վաղվաղակի Յիսուս ձգեաց զձեռն իւր՝ կալաւ զնա եւ ասէ. թերահաւատ՝ ընդէ՞ր երկմտեցեր։ 32 Եւ իբրեւ ել ՚ի նաւն՝ հանդարտեցաւ հողմն։ 33 Եւ որք ՚ի նաւին էին՝ մատեան եւ երկիր պագին նմա՝ եւ ասեն՝ արդարեւ

(Մարկ. 6.53.) որդի Այ՟ ես դու: *Եւ անցեալ 'ի ցամաք, եկին 'ի գեննեսարէթ: *Եւ իբրև ծանեան զնա արք տեղւոյն այնորիկ, առաքեցին ընդ ամ՟ գաւառն՝ և ածին առ նա զամենայն հիւանդս: *Եւ աղաչէին զնա. զի գոնէ միայն 'ի քղանցս հանդերձի նր՟ մերձեսցին: և որք միանգամ մերձեցան՝ փրկեցան:

## Գլ: ԺԵ:

Յայնժամ մատեան առ Յս՟՝ որք յԵրմ՟ փարիսեցիքն և դպիրք. և ասեն: *Ընդէ՞ր աշակերտքն քո անցանեն զաւանդութեամբ ծերոցն. զի ո՛չ լուանան զձեռս՝ յորժամ զհաց ուտեն: (Մարկ. 7.15.) *Նա պատասխանի ետ և ասէ ցնս՟. իսկ դուք ընդէ՞ր անցանէք զպատուիրանաւն Այ՟ վասն ձերոյ աւանդութեան: *Զի Այ՟ ասաց. պատուեա՛ զհայր քո և զմայր: (Ելից. 20.12. Բ. Օրէն. 5. 16.) *Եւ որ բամբասէ զհայր կամ զմայր՝ մահու վախճանեսցի: (Եփես. 6. 2.) *Եւ դուք ասէք՝ որ ասիցէ ցհայր իւր կամ ցմայր իւր. թէ պատարագ է՝ զոր յինէն օգտիցիս: Եւ ո՛չ պատուիցէ զհայր իւր և զմայր: և խոտեցէք զբանն Այ՟ վն՟ ձերոյ աւանդութեանն: (Ելից. 21. 17. Ղեւտ. 20.9. Առակ. 20. 20.) *Կեղծաւորք՝ բարւոք մարգարէացաւ 'ի վր՟ ձեր եսայի՝ և ասէ: *Ժողովուրդս այս շրթամբք պատուէ զիս՝ և սիրտ իւրեանց հեռացեալ մեկուսի է յինէն: (Եսայ. 29.13. Մարկ. 7. 6.) *Զուր պաշտեն զիս. ուսուցանեն վարդապետութիւնս՝ զմարդկան պատուիրեալս: *Եւ կոչեալ առ ինքն զժողովուրդն՝ ասէ ցնս՟: լուարո՛ւք, և 'ի միտ առէք: (Մարկ. 7. 15.) *Ո՛չ որինչ մտանէ ընդ բերան, պղծէ զմարդ. այլ որինչ ելանէ 'ի բերանոյ՝ այն պղծէ զմարդ: *Յայնժամ մատուցեալ ոմանք յաշակերտացն նր՟ ասեն: գիտե՞ս զի փարիսեցիքն իբրև լուան զբանն՝ գայթագղեցան: *Նա պատասխանի ետ նոցա և ասէ: (Յոհան. 15. 2.) ամ՟ տունկ զոր ո՛չ տնկեաց հայր իմ երկնաւոր, խլեսցի: *Թո՛յլ տուք զնոսա՝ կոյրք են՝ կուրաց առաջնորդք: (Ղուկ. 6.39.) կոյր կուրի յորժամ առաջնորդէ՝ սխալէ՝ և երկոքին 'ի խորխորատ անկանին: (Մարկ. 7.17.) *Պատասխանի ետ նմա պետրոս և ասէ. մեկնեա՛ մեզ զառակս զայս: *Ասէ Յս՟՝ տակաւին և դուք անմիտք էք: *Եւ ո՛չ իմանայք, եթէ ամ՟ որ մտանէ 'ի բերան, յորովայն երթայ՝ և արտաքս ելանէ: *Իսկ որ ելանէ 'ի բերանոյ՝ 'ի սրտէ անտի գայ. և այն պղծէ զմարդն: (Մարկ. 7.21.) *Զի 'ի սրտէ ելանեն խորհուրդք չարք՝: սպանութիւնք: շնութիւնք: պոռնկութիւնք: գողութիւնք: սուտ վկայութիւնք: հայհոյութիւնք: *Այս ամ՟ է՝ որ պղծէ զմարդն. այլ անլուա ձեռօք ուտել՝ ո՛չ պղծէ զմարդ: (Մարկ. 7.25.) *Եւ ելեալ անտի Յս՟ գնաց 'ի կողմանս տիւրոսի և սիդոնի: *Եւ ահա կին մի քանանացի 'ի սահմանաց անտի նոցա. ելեալ աղաղակէր և ասէր: ողորմեա՛ց ինձ Տր՟ որդի դաւթի. դուստր իմ չարաչար դիւահարի: *Եւ նա ո՛չ ետ նմա պատասխանի: և մատուցեալ աշակերտքն նր՟ աղաչէին զնա և ասէին. արձակեա՛ զնա՝ զի աղաղակէ զհետ մեր: *Նա պատասխանի ետ և ասէ. ո՛չ ուրեք առաքեցայ՝ եթէ ո՛չ առ ոչխարս կորուսեալս տանն Իղի: (Մտթ. 10.6. Յոհան. 10.3.) *Եւ նա մատուցեալ երկիր պագանէր նմա և ասէր. Տր՟ օգնեա՛ ինձ: *Պատասխանի ետ նմա և ասէ. ո՛չ է բարւոք՝ առնուլ զհաց մանկանց և արկանել շանց: *Եւ նա ասէ՝ այո՛ Տր՟: քանզի և շունք կերակրին 'ի փշրանաց անկելոց 'ի սեղանոյ տեառն իւրեանց: *Յայնժամ պատասխանի ետ նմա Յս՟ և ասէ. ո՛վ կին դու. մեծ են հաւատք քո: եղիցի քեզ՝ որպէս և կամիս: և բժշկեցաւ դուստր նր՟ 'ի նմին ժամու: *Եւ գնացեալ անտի Յս՟, եկն 'ի ծովեզրն գալիլեացւոց: և ելեալ 'ի լեառն՝ նստէր անդ: (Եսայ. 35.5.) *Մատեան առ նա ժողովուրդք բազումք՝ որք ունէին ընդ իւրեանս, կաղս՝ կոյրս՝ համերս՝ միակողմանիս. և այլս բազումս: և ընկեցին զնոսա առ ոտս նորա՝ և բժշկեաց զնոսա: *Մինչև զարմանալ ժողովրդոցն՝ որք տեսանէին: զի համերքն խօսէին: կաղք գնային: միակողմանիք բժշկէին: կոյրք տեսանէին. և փառաւոր առնէին զԱծ՟ Իղի: (Մարկ. 8. 1.) *Եւ կոչեալ առ ինքն Յս՟ զաշակերտսն ասէ: գթամ 'ի ժողովուրդդ. զի արդ՝ երեք աւուրք են՝ զի կան առ իս. և ո՛չ ունին զինչ ուտիցեն. և արձակել զդոսա նօթիս՝ չկամիմ. գուցէ նքթիցին զճանապարհայն: *Ասեն ցնա աշակերտքն: արդ մեզ յանապատի աստ ուստի՞ իցէ այնչափ հաց՝ մինչև յագեցուցանել զայսչափ ժողովուրդ: *Եւ ասէ ցնոսա Յս՟. քանի՞ նկանակ ունիք: և նոքա ասեն. եօթն. և սակաւ ձկունս: *Եւ հրամայեաց ժողովրդեանն բազմիլ 'ի վր՟ գետնոյ: *Եւ առեալ զեօթն նկանակն և զձկունսն՝ գոհացաւ՝ և եբեկ՝ և ետ ցաշակերտսն. և նք՟ ժողովրդեանն: *Կերին ամենեքեան և յագեցան: և բարձին զնշխարս կոտորոցն՝ եօթն զամբիւղ լի: *Եւ որք կերինն՝ էին արք իբրև չորք հազարք՝ թո՛ղ զկանայս և զմանկտիս: *Իբրև արձակեաց զժողովուրդսն, ել 'ի նաւ՝ և եկն 'ի սահմանս մագդաղենացւոց.

Գլ:

## Գլ. ԺԶ.

[‖ Մարկ. 8.11.] 1 Եւ ‖ մատուցեալ փարիսեցիքն՝ և սադուկեցիք փորձելով խնդրէին ՚ի նմանէ նշան յերկնից ցուցանել նց՟:

2 Նա պատասխանի ետ՝ և ասէ ցնոսա. [‖ Ղուկ. 12.54.] ‖ յորժամ երեկոյ լինի՝ ասէք, պարզ լինիցի. զի կարմրացեալ է երկին:

3 Եւ առաւօտու՝ այսօր մրրիկ. զի շառագունի տրտմութբ երկին. արդ զերեսս երկնի կարէք քննել. իսկ զնշանս ժամանակիս ոչ կարէք գիտել:

[‖ Մտթ. 12.39. ‖ Յովնան. 2.1.] 4 ‖ Ազգ չար և շնացօղ նշան խնդրէ՝ և նշան մի տացի նմա՝ ‖ բայց նշանն յովնանու մարգարէի: Եւ եթող զնոսա և գնաց:

5 Գնացին և աշակերտքն յայնկոյս. և մոռացան առնուլ զհաց:

[‖ Մարկ. 8.14. Ղուկ. 12.1.] 6 Ասէ ցնս Յս՟՝ ‖ տեսէք և զգոյշ լերուք ՚ի խմորոյ սադուկեցւոյն և փարիսեցւոյն:

7 Նոքա խորհէին ընդ միմեանս՝ և ասէին թէ զհաց ոչ բարձաք:

8 Գիտաց Յս՟ և ասէ. զի՞ խորհիք ՚ի միտս ձեր թերահաւատք՝ եթէ հաց ոչ ունիմք:

[ոչ ունէք* ‖ Մտթ. 14.17. Յովհ. 6.9.] 9 Տակաւին չիմանայք՝ և ոչ յիշէք ‖ զհինգ նկանակն ՚ի հինգ հազարսն. և քանի՞ սակառի բարձիք:

10 Եւ ոչ ‖ զեօթն նկանակն ՚ի չորս հազարսն. և քանի՞ զամբիւղս բարձիք:

[‖ Մտթ. 15.34.] 11 Արդ՝ զիա՞րդ ոչ իմանայք՝ եթէ ոչ վս՟ հացի ասացի ձեզ՝ զգոյշ լինիլ ՚ի խմորոյ սադուկեցւոց և փարիսեցւոցն:

12 Յայնժամ ՚ի միտ առին. թէ ոչ ասաց զգուշանալ ՚ի խմորոյ՝ այլ յաղանդոյ փարիսեցւոցն և սադուկեցւոց:

[ԶԿ ‖ Մարկ. 8.27. Ղուկ. 9.18.] 13 ‖ Եւ եկեալ Յս՟ ՚ի կողմանս փիլիպեայ կեսարեայն, հարցանէր ցաշակերտսն. և ասէր: զո՞ ոք ասեն զինէն մարդիկն՝ թէ իցէ որդի մարդոյ:

14 Եւ նոքա ասեն. ոմն զյօհաննէս մկրտիչ: և այլք զեղիայ՝ և կէսք զերեմիայ. կամ զմիոք ՚ի մարգարէից:

15 Ասէ ցնս՟. իսկ դուք զո՞ ասէք զինէն թէ իցեմ:

[‖ Յովհ. 6.70.] 16 Պատասխանի ետ սիմօն պետրոս՝ և ասէ ցնա. ‖ դու ես Քս՟ն որդի Այ՟ կենդանւոյ:

17 Պատասխանի ետ Յս՟ և ասէ ցնա. երանի քեզ սիմօն որդի յօնանու. զի մարմին և արիւն ոչ յայտնեաց քեզ՝ այլ Հայր իմ որ յերկինս է:

[‖ Յովհ. 1.42.] 18 ‖ Եւ ես քեզ ասեմ. զի դու ես վէմ. և ՚ի վ՟ր այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ. և դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն:

[‖ Եսայ. 22.24. ‖ Յովհ. 20.23.] 19 ‖ Եւ տաց քեզ փականս արքայութն երկնից: ‖ և զոր միանգամ կապեսցես յերկրի, եղիցի կապեալ յերկինս: և զոր արձակեսցես յերկրի, եղիցի արձակեալ յերկինս:

20 Յայնժամ սաստեաց աշակերտացն. զի մի ումեք ասիցեն՝ թէ նա է Քս՟ն:





21 Յայնմհետէ սկսաւ Յս՟ ցուցանել աշակերտացն իւրոց՝ թէ պարտ է նմա երթալ յեմ՟: և բազում չարչարանս չարչարիլ ՚ի քահանայապետիցն՝ և ՚ի դպրաց՝ և ՚ի ծերոց ժողովրդեանն՝ և սպանանիլ. և յերիր աւուր յառնել:

22 Եւ առեալ զնա մեկուսի պետրոսի. սկսաւ կագել ընդ նմա և ասել: քաւ լիցի քեզ Տր՟. մի եղիցի քեզ այդ:

23 Եւ նա դարձեալ ՚ի պետրոս՝ ասէ: ‖ երթ յետս իմ սատանայ. գայթագղութ իմ ես: զի ոչ խորհիս դու զԱյ՟ն այլ զմարդկան: [‖ Մարկ. 8.33.]

24 Յայնժամ Յս՟ ասէ ցաշակերտսն իւր: ‖ եթէ ոք կամի զկնի իմ գալ՝ ուրասցի զանձն. և առցէ զխաչ իւր. և եկեսցէ զկնի իմ: [‖ Մտթ. 10.38. Ղուկ. 9.23. և 14.27.]

25 ‖ Զի որ կամիցի զանձն իւր կեցուցանել՝ կորուսցէ զնա: և որ կորուսցէ զանձն իւր վասն իմ, գտցէ զնա: [և 17.33 ‖ Յովհ. 12.25.]

26 Զի՞նչ օգտիցի մարդ՝ թէ զաշխարհս ամ՟ շահեսցի. և զանձն իւր տուժեսցէ: կամ զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրոյ:

27 Զի գալոց է որդի մարդոյ փառօք հօր իւրոյ՝ հանդերձ հրեշտակօք իւրովք: ‖ և յայնժամ հատուսցէ իւրաքանչիւր ըստ գործս իւր: [‖ Գործ. 17.31. Հռոմ. 2.6.]

28 Ամէն ասեմ ձեզ՝ ‖ զի իցեն ոմանք ՚ի դոցանէ՝ որք աստ կան. որք ոչ ճաշակեսցեն զմահ՝ մինչև տեսցեն զորդի մարդոյ եկեալ արքայութբ իւրով: [‖ Մարկ. 8.39. Ղուկ. 9.27.]

## ԳԼ: ԺԷ:

‖ Մարկ. 9. 1. Ղուկ. 9. 28.

1 Եւ ‖ յետ վեց աւուր առնու Յս զպետրոս՝ և զյակոբոս՝ և զյոհաննէս զեղբայր նորա . և հանէ զնոսա 'ի լեառն մի բարձր առանձինն ։ 2 *Եւ այլակերպեցաւ առաջի նոցա . և լուսաւորեցան երեսք նորա իբրև զարեգակն . և հանդերձք նորա եղեն սպիտակք իբրև զլոյս ։ 3 *Եւ ահա երևեցան նոցա մովսէս և եղիա՝ որք խօսէին ընդ նմա ։ 4 *Պատասխանի ետ պետրոս և ասէ ցՅս . Տր՝ բարւոք է մեզ աստ լինել . եթէ կամիս՝ արասցուք երիս տաղաւարս՝ մի քեզ . և մի մովսեսի . և մի եղիայի ։ 5 *Եւ մինչդեռ նա խօսէր . ահա ամպ լուսաւոր հովանի եղև 'ի վերայ նոցա ։ ‖ ձայն եղև յամպոյն՝ և ասէ . դա՛ է որդի իմ սիրելի՝ ընդ որ հաճեցայ . դմա՛ լուարուք ։

‖ 2. Պետ. 1. 17. Վեր. 3. 17.

6 *Իբրև լուան աշակերտքն, անկան 'ի վ՛ր երեսաց իւրեանց . և երկեան յոյժ ։ 7 *Եւ մատուցեալ Յս՝ բուռն եհար զնոցանէ՝ և ասէ . յո՛տն կացէք՝ և մի՛ երկնչիք ։ 8 *Ամբարձին զաչս իւրեանց՝ և ո՛չ զոք տեսին՝ բայց միայն զՅս ։ 9 *Եւ մինչդեռ իջանէին 'ի լեռնէ անտի, պատուիրեաց նոցա Յս՝ և ասէ . մի՛ ումեք ասիցէք զտեսիլդ՝ մինչև որդի մարդոյ 'ի մեռելոց յարիցէ ։ 10 *Հարցին ցնա աշակերտքն և ասեն ։ ‖ զի՞մրդ դպիրքն ասեն , թէ եղիայի նախ պարտ է գալ ։ 11 *Պատասխանի ետ Յս՝ և ասէ ցնոսա . եղիա գայ՝ և հաստատեսցէ զամենայն ։ 12 *Բայց ասեմ ձեզ՝ ‖ զի եղիա եկեալ իսկ է . և ո՛չ ծանեան զնա՝ ‖ այլ արարին ընդ նմա՛ զոր ինչ կամեցան . նոյնպէս և որդի մարդոյ չարչարելոց է 'ի նոցանէ ։ 13 *Յայնժամ 'ի միտ առին աշակերտքն . թէ վասն յոհաննու մկրտչի ասաց ցնո՛ս ։

‖ Մարկ. 9. 11. Մաղ. 4. 5. ‖ Վեր. 11. 14. ‖ Վեր. 14. 10.

ՕԲ

‖ Մարկ. 9. 16. Ղուկ. 9. 38.

14 *‖ Եւ իբրև եկն 'ի ժողովուրդն, մատեաւ այր մի՝ 'ի ծունր իջանէր և ասէր . Տր՝ ողորմեա՛ որդւոյ իմում . զի լուսնոտի՝ և չարաչար հիւանդանայ . բազում անգամ անկանի 'ի հուր՝ և երբեմն 'ի ջուր ։ 15 *Եւ մատուցի զնա աշակերտացն քոց՝ և ո՛չ կարացին բժշկել ։ 16 *Պատասխանի ետ Յս՝ և ասէ . ո՞վ ազգ անհաւատ և թիւր ։ մինչև երբ իցեմ ընդ ձեզ . մինչև յերբ անսայցեմ ձեզ ։ ա՛ծ զնա առ իս . և ածին զնա առ Յս ։ 17 *Եւ սաստեաց 'ի նա Յս՝ և ել 'ի նմանէ դևն . և բժշկեցաւ մանուկն 'ի ժամէն յայնմանէ ։ 18 *Յայնժամ մատեան աշակերտքն առանձինն, և ասեն ցՅս . մեք ընդէ՞ր ո՛չ կարացաք հանել զնա ։ 19 *Եւ նա ասէ ցնոսա՝ վասն թերահաւատութե՛ ձերոյ . ‖ ամէն ասեմ ձեզ՝ եթէ ունիցիք հաւատս քան զհատ մանանխոյ . ասասջիք լերինս այսմիկ՝ փոխեա՛ց աստի անդր . և փոխեսցի . և ոչինչ անհնարին լինիցի ձեզ ։ 20 *Բայց այս ազգ՝ ո՛չ ելանէ՝ եթէ ոչ աղօթիւք և պահօք ։

‖ Ղուկ. 17. 6.

ՕԴ

‖ Մարկ. 9. 30. Ղուկ. 9. 44. Վար. 20. 18.

21 *Եւ մինչդեռ շրջէին նոքա 'ի գալիլեայ՝ ասէ ցնոսա Յս ։ ‖ մատնելոց է որդի մարդոյ 'ի ձեռս մարդկան ։ 22 *Եւ սպանցեն զնա՝ և յերրիր աւուր յարիցէ . և տրտմեցան յոյժ ։ 23 *Իբրև եկին նոքա 'ի կափառնայում, մատեան, որք զերկդրամեանն պահանջէին առ պետրոս՝ և ասեն . վարդապետն ձեր ո՞չ տայ զերկդրամեանն ։ և ասէ , այո՛ ։ 24 *Եւ իբրև եմուտ 'ի տունն՝ յառաջեաց քան զնա Յս՝ և ասէ . զի՞րդ թուի քեզ սիմօն . թագաւորք երկրի յումմէ՞ առնուն զհարկս՝ կամ զհաս՝ յորդւո՞ց իւրեանց, թէ յօտարաց ։ 25 *Եւ իբրև ասաց թէ յօտարաց . ասէ ցնա Յս՝ ապաքէն ազատք են որդիքն ։ 26 *Բայց զի մի՛ գայթագղեցուսցուք զնոսա . երթ 'ի ծով՝ և ընկեա՛ զկարթ . և զառաջին ձուկն որ ելանիցէ, ա՛ռ և բա՛ց զբերան նորա . և գտանիցես զսատեր . և զայն առեալ տացես ընդ իմ և ընդ քո ։

## ԳԼ: ԺԸ:

‖ Մարկ. 9. 33. Ղուկ. 9. 46. ‖ Վար. 19. 14. ‖ 1. Կոր. 14. 20.

1 Յայնմ աւուր մատեան աշակերտքն առ Յս՝ և ասեն ։ ո՞վ իցէ 'ի մէնջ մեծ յարքայութե՛ երկնից ։ 2 *‖ Եւ կոչեաց առ ինքն Յս զմանուկ մի . կացոյց զնա 'ի մէջ նոցա ։ 3 *Եւ ասէ՝ ամէն ասեմ ձեզ . եթէ ոչ դարձջիք , ‖ և եղիջիք իբրև զմանկտի , ո՛չ մտանիցէք յարքայութիւն երկնից ։ 4 *Արդ՝ որ խոնարհեցուսցանէ զանձն իբրև զմանուկս զայս՝ նա՛ է մեծ յարքայութե՛ երկնից ։ 5 *Եւ որոք ընկալցի զմանուկ մի այսպիսի յանուն իմ, զիս ընդունի ։

‖ Մարկ. 9. 41. Ղուկ. 17. 2. ‖ Վեր. 5. 30. Մարկ. 9. 42.

6 *‖ Եւ որոք գայթագղեցուսցէ զմի 'ի փոքրկանցս յայսցանէ յիս հաւատացելոց՝ լաւ է նմա եթէ կախիցի երկան իշոյ ընդ պարանոց նր՝ և ընկղմիցի 'ի խորս ծովու ։ 7 *Վա՛յ աշխարհի 'ի գայթագղութե՛ց . հարկ է գալ գայթագղութեց . բայց վա՛յ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն գայցէ գայթագղութի՛ ։ 8 *‖ Եթէ ձեռն քո կամ ոտն գայթագղեցուցանէ զքեզ՝ հա՛տ զնա՛ և ընկեա՛ 'ի քէն . լաւ իցէ քեզ միաձեռանի կամ կաղ մտանել 'ի կեանս . քան թէ երկուս ձեռս և երկուս ոտս ունել, և անկանել 'ի հուրն յաւիտենական ։ 9 *Եւ եթէ ակն քո

գայ-

գայթագղեցուցանէ զքեզ, խլեա՛ զնա և ընկեա՛ 'ի քէն. լաւ իցէ քեզ միականի մտանել 'ի կեանս. քան երկուս աչս ունել՝ և անկանել 'ի գեհեն հրոյն:

Օ.Գ. 10 * Զգո՛յշ լերուք՝ մի՛ արհամարհիցէք զմի՛ 'ի փոքրկանցս յայսցանէ. ասեմ ձեզ. զի հրեշտակք նոցա յերկինս հանապազ տեսանեն զերեսս հօր իմոյ որ յերկինս է: 11 * Զի եկն որդի մարդոյ կեցուցանել զկորուսեալսն:

12 * Զինչ թուի ձեզ. եթէ լինիցի մարդոյ հարիւր ոչխար՝ և մոլորիցի մի 'ի նոցանէ, ո՞չ թողուցու զիննսուն և զինն ոչխարսն 'ի լերինս. և երթիցէ խնդրիցէ զմոլորեալն: 13 * Եւ եթէ լինիցի գտանել զնա. ամէն ասեմ ձեզ. զի ուրախ լինի 'ի վերայ նր առաւել քան 'ի վր իննսուն և իննունցն, որք չիցեն մոլորեալք: 14 * Այսպէս ո՛չ են կամք առաջի հօր իմոյ՝ որ յերկինս է՝ եթէ կորիցէ մի 'ի փոքրկանցս յայսցանէ: 15 * Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո՝ երթ յանդիմանեա՛ զնա՝ յորժամ դու և նա միայն իցէք. եթէ լուիցէ քեզ, շահեցար զեղբայր քո: 16 * Ապա թէ ոչ լուիցէ քեզ, առ ընդ քեզ միւս ևս՝ կամ երկուս. զի 'ի բերանոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ա՛մ բան: 17 * Իսկ եթէ նոցա ոչ լուիցէ՝ ասասջի՛ր յեկեղեցւոջ. ապա եթէ և եկեղեցւոյն ոչ լուիցէ, եղիցի քեզ իբրև զհեթանոսն և զմաքսաւոր:

18 * Ամէն ասեմ ձեզ. զոր կապիցէք յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս. և զոր արձակիցէք յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս: 19 * Դարձեալ ասեմ ձեզ. եթէ երկու 'ի ձէնջ միաբանիցին յերկրի վասն ա՛մ իրաց. զինչ և խնդրեսցեն՝ եղիցի նոցա 'ի հօրէ իմմէ՝ որ յերկինս է: 20 * Զի ուր իցեն երկու կամ երեք ժողովեալ յանուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նց: 21 * Յայնժամ մատեաւ առ նա պետրոս՝ և ասէ. Տ՛ր՝ քանի՞ցս անգամ եթէ մեղիցէ ինձ եղբայր իմ, և թողից նմա. մինչև յեօթն անգամ: 22 * Ասէ ցնա Յս. ո՛չ ասեմ քեզ՝ թէ մինչև յեօթն անգամ. այլ մինչև յեօթանասնեկին եօթն: 23 * Վա այսորիկ նմանեցաւ արքայութի երկնից առն թագաւորի. որ կամեցաւ համար առնուլ 'ի մէջ ծառայից իւրոց: 24 * Եւ իբրև սկսաւ առնուլ՝ մատուցաւ առ նա պարտապան մի բիւր քանքարոյ: 25 * Իբրև ոչ ունէր հատուցանել՝ հրամայեաց վաճառել զնա տէրն նր. և զկին նր՝ և զորդիս՝ և զա՛մ որ զինչ և ունիցի՝ և հատուցանել: 26 * Եւ անկեալ ծառայն երկիր պագանէր նմա և ասէր.

Սաղմ. 33.8. Ծննդ. 48.16. Ղուկ. 19.10. Ղուկ. 15.4. Ղևտ. 19.17. Սիրաք 19.13. Ղուկ. 17.3. Յակ. 5.19. Բ.Օրէն. 19.15. Յովհ. 8.17. Բ.Կորն. 13.1. Նէեմ. 10.28. Ա.Կորն. 5.9. Բ.Թեսաղ. 3.14. Յովհ. 20.23. Ղուկ. 17.4.

երկայնամի՛տ լեր առ իս՝ և զա՛մ հատուցից քեզ: 27 * Գթացեալ տէր ծառային այնորիկ՝ արձակեաց զնա. և զփոխն եթող նմա: 28 * Եւ ելեալ ծառայն այն եգիտ զմի 'ի ծառայակցաց իւրոց. որ պարտէր նմա հարիւր դահեկան: և կալեալ զնա խեղդէր՝ և ասէր. հատո՛ ինձ, զոր պարտիս: 29 * Անդ՝ անկեալ ծառայակիցն առ ոտս նորա՝ աղաչէր զնա և ասէր՝ երկայնամի՛տ լեր առ իս՝ և հատուցից քեզ: 30 * Եւ նա ո՛չ կամէր. այլ չոքաւ էարկ զնա 'ի բանտ՝ մինչև հատուսցէ զպարտսն: 31 * Իբրև տեսին ծառայակիցքն նորա, որ ինչ եղեն՝ տրտմեցան յոյժ. և եկեալ ցուցին տեառն իւրեանց զա՛մ որինչ եղեն: 32 * Յայնժամ կոչեաց զնա տէրն իւր և ասէ: ծառա՛յ չար: զա՛մ զպարտսն թողի քեզ՝ վասնզի աղաչեցեր զիս: 33 * Իսկ արդ՝ ո՛չ էր պարտ և քեզ ողորմիլ ծառայակցին քում. ո՞ր և ես քեզ ողորմեցայ: 34 * Եւ բարկացեալ տէրն նր՝ մատնեաց զնա դահճաց. մինչև հատուսցէ զա՛մ զպարտսն: 35 * Նոյնպէս և հայր իմ որ յերկինս է՝ արասցէ ձեզ. եթէ ոչ թողուցուք իւրաքանչիւր եղբօր իւրում 'ի սրտից ձերոց զյանցանս նոցա:

## Գ Լ: Ժ Թ:

Օ.Ե. 1 Եւ եղև՝ իբրև կատարեաց Յիսուս զբանս զայսոսիկ, փոխեցաւ 'ի գալիլեէ՝ և եկն 'ի սահմանս հրէաստանի յայնկոյս յորդանանու: 2 * Եւ գնացին զհետ նր ժողովուրդք բազումք՝ և բժշկեաց զնոսա անդ: 3 * Եւ մատուցեալ առ նա փարիսեցիքն, փորձէին զնա. եթէ արժա՞ն իցէ ումեք արձակել զկին իւր ըստ ա՛մ վնասու: 4 * Պատասխանի ետ նոցա և ասէ. չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ որ հաստատեաց 'ի սկզբանէ՝ արու և էգ արար զնոսա, և ասէ: 5 * Վա այսորիկ թողցէ այր զհայր և զմայր՝ և երթիցէ զհետ կնոջ իւրոյ՝ և եղիցին երկոքեան 'ի մարմին մի: 6 * Ապա ուրեմն ո՛չ են երկու՝ այլ մի մարմին. արդ՝ զոր Ած զուգեաց՝ մարդ՝ մի՛ մեկնեսցէ: 7 * Ասեն ցնա՝ իսկ մովսէս ը՞էր պատուիրեաց մեզ տալ թուղթ մեկնելոյ՝ և արձակել: 8 * Ասէ ցնոսա. մովսէս վասն խստութե ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր. այլ 'ի սկզբանէ ո՛չ եղև այնպէս: 9 * Բայց ասեմ ձեզ՝ զի ա՛մ, որ արձակեսցէ զկին իւր և ոչ վասն պոռնկութե, և առնիցէ այլ՝ շնայ. և որ զարձակեալն առնիցէ՝ շնայ: 10 * Ասեն ցնա աշակերտքն իւր. եթէ

Մարկ. 10.1. Մարկ. 10.2. զնա և ասէին. Ծննդ. 1.27. Ծննդ. 2.24. 1.Կորն. 6.16. Եփես. 5.31. Բ.Օրէն. 24.1. Մատթ. 5.32. Մարկ. 10.11. Ղուկ. 16.18.

Եթէ այդպէս վնաս իցէ ընդ այր և ընդ կին, լաւ է չամուսնանալ: 11 * Եւ նա ասէ ցնոսա՝ ոչ ամենեքին բաւական են այդմ բանի, այլ որոց տուեալ է: 12 * Զի են ներքինիք՝ որք յորովայնէ մօր իւրեանց ծնան այնպէս. և են ներքինիք. որք 'ի մարդկանէ եղեն ներքինիք. և են ներքինիք՝ որք զանձինս իւրեանց արարին ներքինիս վասն արքայութեան երկնից. որ կարող է տանել՝ տարցի: 13 *Յայնժամ մատուցին առ նա մանկտի. զի ձեռն դիցէ 'ի վերայ նոցա՝ և աղօթս արասցէ: և աշակերտքն նորա սաստէին նոցա: 14 * Եւ ասէ Յս. Թոյլ տուք մանկտւոյդ՝ և մի՛ արգելուք զդոսա գալ առ իս: զի այդպիսեացդ է արքայութիւն երկնից: 15 * Եւ եդեալ ձեռն 'ի վերայ նց՝ գնաց անտի: 16 * Եւ ահա մատուցեալ ոմն ասէ: վարդապետ բարի. զի՞նչ բարի գործեցից՝ զի ընդունիցիմ զկեանսն յաւիտենականս: 17 * Եւ նա ասէ ցնա. զի՞ հարցանես զիս զբարւոյ. մի է բարի. եթէ կամիս 'ի կեանսն յաւիտենականս մտանել՝ պահեա՛ զպատուիրանսն: 18 * Ասէ ցնա՝ զո՞րս. ասէ ցնա Յս. զմի՛ սպանաներն՝ և մի՛ շնար՝ և մի՛ սուտ վկայեր: 19 * Պատուեա՛ զհայր քո և զմայր. և սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո: 20 * Ասէ ցնա պատանին, զայդ ամենայն պահեցի 'ի մանկութենէ իմմէ: արդ իւիք պակաս իցեմ: 21 * Ասէ ցնա Յս: եթէ կամիս կատարեալ լինել, երթ՝ վաճառեա՛ զինչս քո՝ և տուր աղքատաց. և ունիցիս գանձս յերկինս. և եկ զկնի իմ: 22 * Իբրև լուաւ պատանին զբանն, գնաց տրտմեալ: զի ունէր ստացուածս բազումս: 23 * Եւ ասէ Յս ցաշակերտսն. ամէն ասեմ ձեզ: զի դժուարաւ մտցէ մեծատուն յարքայութիւն երկնից: 24 * Դարձեալ ասեմ ձեզ. դիւրին է մալխոյ մտանել ընդ ծակ ասղան քան մեծատան յարքայութիւն Այ մտանել: 25 * Իբրև լուան աշակերտքն՝ զարմացան յոյժ. և ասեն, իսկ ո՞ կարիցէ ապրել: 26 * Հայեցաւ 'ի նոսա Յս, և ասէ: առ 'ի մարդկանէ այդ անկար է. այլ առ յԱյ ամենայն ինչ զօրաւոր: 27 * Յայնժամ պատասխանի ետ պետրոս և ասէ ցնա. ահաւասիկ մեք թողաք զամենայն և եկաք զկնի քո. արդ զի՞նչ լինիցի մեզ: 28 * Ասէ ցնոսա Յս. ամէն ասեմ ձեզ. զի դուք՝ որք եկիք զկնի իմ, 'ի միւսանգամ գալստեան. յորժամ նստցի որդի մարդոյ յաթոռ փառաց իւրոց, նստջիք և դուք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգս Իլի: 29 * Եւ ամ որք թողուն. կամ զեղբարս՝ կամ զքորս՝ կամ զհայր՝ կամ զմայր՝ կամ զկին՝ կամ զորդիս՝ կամ զագարակս վասն անուան իմոյ. հարիւրապատիկ առցէ՝ և զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ: 30 * Բազումք եղիցին առաջինք յետինք՝ և յետինք առաջինք:

Ա. Կորն. 7.10. Մարկ. 10.13. Ղուկ. 18.15. Վեր. 18.2. Օ.Օ. Մարկ. 10.17. Ղուկ. 18.18. Ելից 20.13.

## Գլ. Ի.

1 Բ Նման է արքայութիւն երկնից առն տանուտեառն. որ ել ընդ առաւօտս 'ի վարձու ունել մշակս յայգի իւր: 2 * Եւ հարկ վարձս մշակացն աւուրն դահեկան. և առաքեաց զնոսա յայգի իւր: 3 * Եւ ելեալ զերրորդ ժամու՝ ետես այլս՝ զի կային դատարկք 'ի հրապարակս: 4 * Ասէ և ցնոսա: երթայք և դուք յայգի իմ. և որ ինչ արժան իցէ՝ տաց ձեզ: 5 * Գնացին և նոքա: և դարձեալ ելեալ զվեցժամու՝ և զիննժամու՝ արար նոյնպէս: 6 * Եւ զմետասաներորդ ժամու ելեալ եգիտ այլս. զի կային դատարկք. ասէ և ցնոսա՝ ընդէ՞ր կայք աստ զօրս ցերեկ դատարկք: 7 * Ասեն ցնա՝ զի ոչ ոք կալաւ զմեզ 'ի վարձու. ասէ ցնս՝ երթայք և դուք յայգին. և որինչ արժան է՝ առնուցուք: 8 * Եւ իբրև երեկոյ եղև՝ ասէ Տր այգւոյն ցգաւառապետ իւր. կոչեա՛ զմշակսն՝ և տուր նոցա զվարձս՝ սկսեալ 'ի յետնոցն մինչև ցառաջինսն: 9 * Իբրև եկին որք զմետասաներորդ ժամուն. առին մէն մի դահեկան: 10 * Եկեալ և առաջինքն համարէին թէ աւելի առնուցուն. և առին մէն մի դահեկան և նոքա: 11 * Իբրև առին, տրտնջէին զտանուտեառնէն՝ և ասէին: 12 * Թէ դոքա յետինքդ մի ժամ գործեցին՝ և հաւասարակորդս մեզ արարեր զդոսա. որք զծանրութիւն աւուրն բարձաք և զտօթ: 13 * Եւ պատասխանի ետ միում 'ի նոցանէ և ասէ՝ ընկեր չզրկեմ զքեզ. ո՞չ դահեկանի միոջ սակ արկեր ընդ իս: 14 * Ա՛ռ զքոյդ՝ և երթ. եթէ կամիցիմ յետնոցս տալ՝ որպէս և քեզ: 15 * Եւ թէ չիցէ՞ ինձ իշխանութիւն յիմս առնել զինչ և կամիմ. կամ թէ ակն քո չար է. զի ես առատ եմ: 16 * Այսպ եղիցին յետինք առաջինք՝ և առաջինք յետինք. զի բազումք են կոչեցեալք. և սակաւք են ընտրեալք: 17 * Իբրև ելանէր Յս յԵմ, զերկոտասանսն առանձինն. և 'ի ճանապարհին ասէ ցնոսա: 18 * Ահաւասիկ ելանեմք յԵմ. և որդի մարդոյ մատնեսցի քահանայապետից՝ և դպրաց. և դատապարտեսցեն զնա 'ի մահ:

Վար. 20.16. Մարկ. 10.31. Ղուկ. 13.30. Վեր. 19.30. Մարկ. 10.31. Ղուկ. 13.30. Օ.Ի. Մարկ. 10.32. Ղուկ. 18.31.

19 * Եւ մատնեսցեն զնա հեթանոսաց՝ այպանել՝ և հարկանել՝ և ՚ի խաչհանել. և յերիր աւուր յարիցէ ։ 20 *‖Յայնժամ մատեաւ առ նա մայր որդւոցն զեբեդեայ որդւովքն իւրովք հանդերձ. երկիր պագանէր՝ և խնդրէր ինչ ՚ի նմանէ ։ 21 *Եւ նա ասէ ցնա. զի՞նչ կամիս. ասէ ցնա. ասա՛, զի նստցին սոքա երկու որդիքս իմ. մի ընդ աջմէ քումմէ՝ և մի ընդ ահեկէ յարքայութեան քում։ 22 *Պատասխանի ետ Յս և ասէ. ո՛չ գիտէք զինչ խնդրէք. կարէ՞ք ըմպել զբաժակն, զոր ես ըմպելոց եմ. կամ զմկրտութիւն զոր ես մկրտելոց եմ մկրտիլ. ասեն ցնա՝ կարող եմք ։ 23 *Ասէ ցնս Յս. զբաժակն իմ ըմպիցէք. և զմկրտութիւն զոր ես մկրտելոց եմ, մկրտիցիք՝ բայց նստուցանել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝ ո՛չ է իմ տալ. այլ որոց տուեալ է ՚ի հօրէ իմմէ ։

[‖ Մարկ. 10. 35.]

24 *‖ Եւ լուեալ տասանցն՝ բարկացան ՚ի վերայ երկուցն եղբարց ։ 25 *‖Յս կոչեաց զնոսա առ ինքն և ասէ. գիտէք, զի իշխանք ազգաց տիրեն նոցա. և մեծամեծքն իշխեն նց։ 26 * Ոչ այնպէս իցէ և ՚ի ձերում միջի. այլ որ կամիցի ՚ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշտօնեայ ։ 27 *Եւ որ կամիցի ՚ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ձեր ծառայ ։ 28 *‖ Ոպ որդի մարդոյ ո՛չ եկն պաշտօն առնուլ՝ այլ պաշտել. և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց ։

[‖ Մարկ. 10.41. ‖ Ղուկ. 22. 25. ‖ Փիլիպ. 2. 7.]

Ի: Կ

29 *‖Եւ յելանել նոցա յերիքովէ՝ գնացին զհետ նր ժողովուրդք բազումք։ 30 * Եւ ահա կոյրք երկու նստէին առ ճանապարհաւն. իբրև լուան թէ Յս անցանէ՝ աղաղակեցին և ասեն, ողորմեա՛ց մեզ Յս որդի դաւթի ։ 31 *Եւ ամբոխն սաստեաց նց՝ զի լռեսցեն. և նք ևս առաւել աղաղակէին և ասէին, Տր ողորմեա՛ց մեզ որդի դաւթի ։ 32 * Օտեղի կառ Յս՝ կոչեաց զնոսա և ասէ՝ զինչ կամիք՝ զի արարից ձեզ։ 33 *Ասեն ցնա. Տր՝ զի բացցին աչք մեր։ 34 * Եւ գթացեալ Յս մերձեցաւ յաչս նոցա՝ և վաղվաղակի տեսին. և գնացին զհետ նորա ։

[‖ Մարկ. 10.46. Ղուկ. 18. 35.]

## ԳԼ: ԻԱ.

1 Իբրև ‖ մօտ եղեն յեմ. և եկին ՚ի բեթփագէ մերձ ՚ի լեառն ձիթենեաց ։ յայնժամ Յս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց ։ 2 *Եւ ասէ ցնոսա. երթա՛յք ՚ի գեօղ՝ որ առաջի ձեր է ։ և անդէն գտանէք զէշ կապեալ՝ և յաւանակ ընդ նմին. լուծէ՛ք և ածէ՛ք ինձ ։ 3 *Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջիք, եթէ Տն իւրեանց պիտոյ են ։ և վաղվաղակի առաքեսցէ զնոսա ։ 4 *Բայց այս ամ եղև՝ զի լցցի բան մարգարէին՝ որ ասէ ։ 5 * ‖Ասացէք դստեր սիօնի. ահա թագաւոր քո գայ քեզ հեզ. հեծեալ յէշ և յաւանակի իշոյ ։ 6 *Գնացին աշակերտքն. և արարին որպ 7 հրամայեաց նոցա Յս ։ * Եւ ածին զէշն և զյաւանակն ։ և արկին զնոքօք ձորձս՝ և նստաւ ՚ի վերայ նոցա ։ 8 * Եւ բազում ժողովուրդք տարածեցին զհանդերձս իւրեանց ՚ի ճանապարհին ։ և այլք հատանէին ոստս ՚ի ծառոց՝ և տարածանէին ՚ի ճանապարհին։ 9 *Եւ ժողովուրդքն՝ որք առաջի և զկնի երթային, աղաղակէին և ասէին ։ ‖Օրհնութի որդւոյ դաւթի. օրհնեալ որ գայ յանուն Տն. օրհնութի ՚ի 10 բարձունս ։ *Եւ ՚ի մտանելն նր յեմ՝ դղրդեցաւ քաղաքն ամ. և ասէ՝ ո՞վ 11 իցէ սա ։ * Եւ ժողովուրդքն ասեն՝ սա՛ է մարգարէն Յս՝ որ ՚ի նազարե-12 թէ գալիլեացւոց ։*‖Եւ եմուտ Յս ՚ի տաճարն՝ և եհան արտաքս զամենեսին, որք վաճառէինն և գնէին ՚ի տաճարի անդ ։ և զսեղանս հատավաճառացն կործանեաց. և զաթոռս աղաւնէ-13 վաճառացն ։ *Եւ ասէ ցնս. գրեալ է՝ ‖ տուն իմ տուն աղօթից կոչեսցի ։ և դուք արարէք զդա այրս աւազակաց ։ 14 *Եւ մատեան առ նա կոյրք և կաղք ՚ի տաճարին. և բժշկեաց զնոսա ։ 15 * Իբրև տեսին քահանայապետքն և դպիրք զսքանչելիսն՝ զորս արար. և զմանկտին՝ որք աղաղակէին ՚ի տաճարին. և ասէին ։ ովսաննայ՝ օրհնութի 16 որդւոյ դաւթի՝ բարկացան ։ *Եւ ասեն ցնա ։ լսե՞ս, զինչ ասեն դոքա ։ ասէ ցնս Յս՝ այո՛ ։ չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ ‖ ՚ի բերանոյ տղայոց և ստնդեաց 17 կատարեցեր զօրհնութի ։ * Եւ թողեալ զնոսա՝ ել արտաքոյ քաղաքին ՚ի 18 բեթանիայ, և անդ ագաւ ։ * Եւ այգուցն իբրև դարձաւ անդրէն ՚ի քաղաքն՝ 19 քաղցեաւ ։* ‖Եւ տեսեալ զթզենի մի ՚ի վերայ ճանապարհին՝ եկն ՚ի նա՝ և ո՛չ եգիտ ՚ի նմա, բայց միայն տերև ։ և ասէ ցնա, մի՛ այսուհետև ՚ի քէն պտուղ եղիցի յաւիտեան ։ և առժամայն չորացաւ թզենին ։

Ի: Բ

20 *‖Իբրև տեսին աշակերտքն՝ զարմացան և ասեն. թէ զիարդ վաղվաղա-21 կի ցամաքեցաւ թզենին ։ * Պատասխանի ետ Յս՝ և ասէ ցնոսա . ամէն ասեմ ձեզ ։ եթէ ունիցիք հաւատս՝ և ոչ երկմտիցիք՝ ո՛չ միայն թզենւոյդ առնիցէք. այլ թէպէտ և լերինդ ասիցէք՝ բարձիր, և անկիր ՚ի ծով՝ եղիցի ։ 22 *‖ Եւ զամենայն ինչ զոր և խնդրիցէք յա-

[‖ Մարկ. 11. 1. Ղուկ. 19.29. ‖ Եսայ. 62. 11. Զաքար. 9. 9. Յոհան. 12.15. ‖ Սաղմ. 117.26. Մարկ. 11. 9. Ղուկ. 19. 38. ‖ Մարկ. 11.15. Ղուկ. 19.45. Յոհան. 2.14. ‖ 2. Օրէ. 14.25. Եսայ. 56.7. Երեմ. 7.11. Ղուկ. 19. 46. ‖ Սաղմ. 8. 3. ‖ Մարկ. 11.13. ‖ Մարկ. 11.20. ‖ Մէր. 7. 7.]

յաղօթս հաւատովք՝ առնուցուք։

23 *Եւ իբրեւ եկն ’ի տաճարն, մատեան առ նա՝ մինչդեռ ուսուցանէր, քահանայապետքն եւ ծերք ժողովրդեանն՝ եւ ասեն. ‖ Որո՞վ իշխանութեամբ առնես զայդ. եւ ո՞վ ետ քեզ զիշխանութիւնդ զայդ։ [Մարկ. 11. 24. Յովհ. 3. 22. ‖ Մարկ. 11. 28. Ղուկ. 20. 2.]

24 *Պատասխանի ետ Յս՟ եւ ասէ ցնոսա. Հարցից եւ ես զձեզ բան մի. զոր եթէ ասիցէք ինձ, եւ ես ձեզ ասացից որով իշխանութեամբ առնեմ զայս։

25 *Մկրտութիւնն Յովհաննու ուստի՞ էր. յերկնից, թէ ’ի մարդկանէ։ Եւ նոքա խորհէին ընդ միտս՝ եւ ասէին.

26 *Եթէ ասեմք յերկնից՝ ասէ ցմեզ. իսկ ընդէ՞ր ոչ հաւատայիք նմա։ Եւ եթէ ասեմք ’ի մարդկանէ՝ երկնչիմք ’ի ժողովրդենէն. ‖ զի ամենեքին զՅովհաննէս իբրեւ զմարգարէ ունէին։ [‖ Մտթ. 14. 5.]

27 *Պատասխանի ետուն Յի՟ եւ ասեն. Ո՛չ գիտեմք։ Ասէ ցնոսա եւ նա. Եւ ո՛չ ես ասեմ ձեզ՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։

28 *Բայց զիա՞րդ թուի ձեզ՝ առն միոջ էին երկու որդիք. եւ մատուցեալ առ առաջինն ասէ՝ †Երթ այսօր գործեա յայգւոջ։ [†Որդեակ]

29 *Եւ նա պատասխանի ետ եւ ասէ. Երթամ տէր՝ եւ ո՛չ չոգաւ։

30 *Մատեաւ եւ առ միւսն եւ ասէ նոյնպէս. Նա պատասխանի ետ եւ ասէ՝ Ո՛չ կամիմ. բայց յետոյ զղջացաւ՝ եւ չոգաւ յայգին։

31 *Արդ ո՞ յերկոցունց արար զկամս հօրն. ասեն՝ Յետինն։ Ասէ ցնոսա Յս՟. Ամէն ասեմ ձեզ. զի մաքսաւորք եւ պոռնիկք յառաջեսցեն քան զձեզ յարքայութիւն երկնից։

32 *Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարութեան՝ եւ ո՛չ հաւատացիք նմա. եւ մաքսաւորք եւ պոռնիկք հաւատացին նմա. եւ դուք տեսիք՝ եւ ո՛չ զղջացայք յետոյ հաւատալ նմա։

Լ.Գ

33 *Այլ առակ լուարուք. ‖ Այր մի էր տանուտէր՝ որ տնկեաց այգի. եւ ցանգով պատեաց զնա եւ փորեաց ’ի նմա հնձան. եւ շինեաց աշտարակ. եւ ետ զնա ցմշակս, եւ գնաց ’ի տար աշխարհ։ [‖ Մարկ. 12. 1. Ղուկ. 20. 9. Եսայ. 5. 1. եւ 5. Երեմ. 2. 21.]

34 *Իբրեւ մերձեցաւ ժամանակ պտղոյ՝ առաքեաց զծառայս իւր առ մշակսն՝ առնուլ զպտուղս նր՟։

35 *Եւ կալեալ մշակացն զծառայս նր՟, զոմն տանջեցին. զոմն սպանին. զոմն քարկոծեցին։

36 *Դարձեալ առաքեաց այլ ծառայս բազումս քան զառաջինսն. եւ արարին նց՟ նոյնպէս։

37 *Յետոյ առաքեաց առ նոսա զորդի իւր եւ ասէ. Թերեւս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։

38 *Իսկ մշակքն իբրեւ տեսին զորդին, ասեն ընդ միտս՝ ‖ Սա է ժառանգն. եկա՛յք սպանցուք զսա. եւ կալցուք զժառանգութիւն սորա։ [‖ Մտթ. 26. 3. եւ 27. 1. Յովհ. 11. 53.]

39 *Եւ առեալ հանին զնա արտաքոյ քան զայգին՝ եւ սպանին։

40 *Արդ յորժամ եկեսցէ տէր այգւոյն՝ զի՞նչ արասցէ մշակացն այնոցիկ։

41 *Ասեն ցնա. Զչարսն չարաչար կորուսցէ. եւ զայգին տացէ այլոց մշակաց. որք տացեն նմա զպտուղս ’ի ժամու իւրում։

42 *Ասէ ցնոսա Յս՟. Չիցէ՞ երբէք ընթերցեալ ձեր ’ի գիրս. ‖ զվէմն՝ զոր անարգեցին շինօղք, նա եղեւ գլուխ անկեան. ’ի Տ՟է եղեւ այս. եւ է սքանչելի յաչս մեր։ [‖ Սաղմ. 117. 22. Գործ. 4. 11. Հռոմ. 9. 33. 1. Պետ. 2. 7.]

43 *Վասն այսորիկ ասեմ ձեզ՝ զի բարձցի ’ի ձէնջ արքայութիւն Ա՟յ. եւ տացի ազգի, որ առնիցէ զպտուղս նր՟։

44 *Եւ որ անկցի ’ի վ՟ր վիմիս այսորիկ, փշրեսցի. եւ յոյր վերայ անկցի, հոսեսցէ զնա։

45 *Իբրեւ լուան քահանայապետքն՝ եւ դպիրք՝ եւ փարիսեցիք զառակս զայս, գիտացին թէ վասն նց՟ ասաց։

46 *Եւ խնդրէին զնա ունել. բայց երկեան ’ի ժողովրդոցն. քանզի իբրեւ զմարգարէ ունէին զնա։

## ԳԼ. ԻԲ.

Լ.Դ

1 Դարձեալ պատասխանի ետ Յս՟ եւ ասէ ցնոսա առակօք։

2 *‖ Նմանեցաւ արքայութիւն երկնից առն թագաւորի. որ արար հարսանիս որդւոյ իւրում։ [‖ Ղուկ. 14. 16. Յայտ. 19. 9.]

3 *Եւ առաքեաց զծառայս իւր կոչել զհրաւիրեալսն ’ի հարսանիս. եւ ո՛չ կամեցան գալ։

4 *Դարձեալ առաքեաց այլ ծառայս՝ եւ ասէ. Ասացէք հրաւիրելոցն. ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի. զուարակք իմ եւ պարարակք զենեալ են. եւ ա՟մ ինչ պատրաստ է. եկա՛յք ’ի հարսանիսս։

5 *Եւ նոքա յուլացեալ գնացին. ո՛մն յագարակ իւր. եւ ո՛մն ’ի վաճառ իւր։

6 *Եւ այլք կալան զծառայս նորա թշնամանեցին, եւ սպանին։

7 *Իսկ թագաւորն իբրեւ լուաւ՝ բարկացաւ. եւ առաքեաց զզօրս իւր. եւ սատակեաց զսպանօղսն զայնոսիկ, եւ զքաղաքս նոցա այրեաց։

8 *Յայնժամ ասէ ցծառայս իւր. Հարսանիքս պատրաստ են. եւ հրաւիրեալքն չէին արժանի։

9 *Արդ երթա՛յք յանցս ճանապարհաց. եւ զորս միանգամ գտանիցէք՝ կոչեցէ՛ք ’ի հարսանիսս։

10 *Եւ ելեալ ծառայքն ’ի ճանապարհս. ժողովեցին զամենեսեան. զորս եւ գտին զչարս եւ զբարիս. եւ լցան հարսանիքն բազմականօք։

11 *Եւ մտեալ թագաւորն հայել զբազմականօքն. ետես անդ զայր մի՝ որոյ ո՛չ էր զգեցեալ հանդերձ հարսանեաց։

12 *Եւ ասէ ցնա. Ընկեր՝ զիա՞րդ մտեր այսր. զի ո՛չ ունէիր հանդերձ հարսանեաց. եւ նա պապանձեցաւ։

13 *Յայնժամ ասէ ցսպասաւորսն.

‖կա_

կապեցէք զդորա զոտս և զձեռս՝ և հանէք զդա ՚ի խաւարն արտաքին։ անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ 14 * Զի բազումք են կոչեցեալք՝ և սակաւք են ընտրեալք։ 15 * Յայնժամ գնացեալ փարիսեցիքն, առին խորհուրդ զնմանէ՝ թէ ո՟պ գտիցեն նմա զորոգայթ բանիւք։ 16 * Եւ առաքեն առ նա զաշակերտսն իւրեանց հերովդիանոսօքն հանդերձ՝ և ասեն։ վարդապետ՝ գիտեմք զի ճշմարիտ ես։ և զճանապարհն Ա՟յ ճշմարտութ՟բ ուսուցանես։ և ոչ է քեզ փոյթ զումեքէ։ և ոչ հայիս յերեսս մարդոյ։ 17 * Արդ՝ ասա մեզ՝ զի՞նչ թուի քեզ։ պա՞րտ է հարկս տալ կայսեր՝ թէ ոչ։ 18 * Գիտաց Յ՟ս զխորամանկութ՟ի նոցա. և ասէ։ զի՞ փորձէք զիս կեղծաւորք։

19 * Ցուցէք ինձ զդահեկան հարկին։ և նոքա մատուցին նմա զդահեկան մի։ 20 * Եւ ասէ ցնոսա Յ՟ս։ ո՞յր է պատկերս այս՝ կամ գիր։ 21 * Ասեն՝ կայսեր։ յայնժամ ասէ ցն՟ս։ երթայք՝ տուք զկայսերն, կայսեր. և զԱ՟յն Ա՟յ։

22 * Իբրև լուան՝ զարմացան. և թողին զնա և գնացին։ 23 * Յայնմ աւուր մատեան առ նա սադուկեցիքն. որք ասէին թէ չիք յարութ՟ի, հարցին ցնա։ 24 * Եւ ասեն, վարդապետ՝ մովսէս ասաց՝ եթէ ոք մեռցի անորդի, արասցէ զկին ն՟ր եղբայր իւր։ և յարուսցէ զաւակ եղբօր իւրում։ 25 * Էին առ մեզ եղբարք եօթն։ առաջինն արար կին՝ և մեռաւ։ և զի ոչ ունէր զաւակ, եթող զկինն իւր եղբօր իւրում։

26 * Նոյնպէս և երկրորդն. և երրորդն. մինչև ցեօթներորդն։ 27 * Յետ ամենեցուն մեռաւ և կինն։ 28 * Արդ՝ ՚ի յարութեան՝ ո՞յր յեօթանցն եղիցի նա կին. զի ամենեքին կալան զնա կին։

29 * Պատասխանի ետ ն՟ց Յ՟ս և ասէ. մոլորեալք՝ ոչ գիտէք զգիրս՝ և ոչ զզօրութ՟ի Ա՟յ։ 30 * Զի ՚ի յարութեան ոչ կանայս առնեն՝ և ոչ արանց լինին. այլ են իբրև զհրեշտակս յերկինս։

31 * Բայց վ՟ն յարութեան մեռելոց չիցէ՞ ընթերցեալ ձեր զասացեալն ձեզ յԱ՟յ։ 32 * Ես եմ Ա՟ծ աբրահամու՝ Ա՟ծ իսահակայ՝ և Ա՟ծ յակոբայ։ և չէ Ա՟ծ Ա՟ծ մեռելոց՝ այլ կենդանեաց։

33 * Իբրև լուան ժողովուրդքն, զարմանային ընդ վարդապետութ՟ի նորա։

34 * Իսկ փարիսեցիքն իբրև լուան եթէ պապանձեցոյց զսադուկեցիսն, ժողովեցան ՚ի միասին։ 35 * Եւ եհարց միոմն ՚ի նոցանէ զնա փորձելով և ասէ։ 36 * Վարդապետ՝ ո՞ր պատուիրան է մեծ յօրէնս։ 37 * Եւ Յ՟ս ասէ ցնա։ սիրես-

Վեր. 8.12. և 13.42. Վար. 25.30. — ԻԵ — Մարկ. 12.13. Ղուկ. 20.20. — Հռոմ. 13.7. — Գործ. 23.6. — 2. Օրէ. 25.5. Մարկ. 12.19. Ղուկ. 20.28. — Ելից. 3.6. — Մարկ. 12.28. Ղուկ. 10.25. և 20.46.

ցես զՏ՟ր Ա՟ծ քո յամ՟ սրտէ քումմէ՝ և յամ՟ անձնէ քումմէ՝ և յամ՟ մտաց քոց։ 38 * Այս է մեծն և առաջին պատուիրան։ 39 * Երկրորդն նման սմին. սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո։ 40 * Յայս երկուս պատուիրանս ամենայն օրէնք և մարգարէք կախեալ կան։

41 * Եւ ՚ի ժողովել փարիսեցւոցն՝ եհարց 42 ցնոսա Յ՟ս՝ և ասէ։ * Զի՞նչ թուի ձեզ վասն Ք՟ի։ ո՞յր որդի է։ ասեն ցնա՝ 43 դաւթի։ * Ասէ ցն՟ս Յ՟ս։ իսկ զիա՞րդ դաւիթ հոգւովն կոչէ զնա Տ՟ր՝ և ասէ։ 44 * Ասաց Տ՟ր ցՏ՟ր իմ. նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչև եդից զթշնամիս քո պատ- 45 ուանդան ոտից քոց։ * Իսկ եթէ դաւիթ զնա Տ՟ր կոչէ՝ զիա՞րդ որդի նորա 46 իցէ։ * Եւ ոչ ոք կարէր տալ նմա պատասխանի բան մի։ և ոչ իշխէր ոք յայնմ օրէ հարցանել զնա և ոչինչ։

2. Օրէ. 6.5. — Ղևտ. 19.18. — Մարկ. 12.31. — Ղուկ. 20.41. — Սաղմ. 109.1.

## ԳԼ։ ԻԳ։

1 Յայնժամ խօսեցաւ Յ՟ս ընդ ժողովուրդսն՝ և ընդ աշակերտսն իւր. 2 և ասէ։ * Յաթոռն մովսէսի նստան 3 դպիրքն և փարիսեցիք։ * Զամ՟ ինչ զոր ասիցեն ձեզ՝ արարէք, և պահեցէք։ բայց ըստ գործոց ն՟ց մի առնէք։ զի ասեն և ոչ առնեն։

4 * Կապեն մարդկան բեռինս ծանունս և դժուարակիրս. և դնեն ՚ի վերայ ուսոց մարդկան. և մատամբ իւրեանց 5 ոչ կամին շարժել զնոսա։ * Եւ զամ՟ զգործս իւրեանց առնեն ՚ի ցոյց մարդկան։ լայնեն զգրապանակս իւրեանց՝ և երկայնեն զքղանցս հանդերձից իւր- 6 եանց։ * Սիրեն զյառաջագահս յընթրիս. և զնախաթոռս ՚ի ժողովուրդս՝ 7 և զողջոյնս ՚ի հրապարակս։ * Եւ կոչել ՚ի մարդկանէ ռաբբի ռաբբի։ 8 * Բայց դուք մի զոք կոչէք վարդապետ. զի մի է ձեր ուսուցիչ։ և ամե- 9 նեքեան դուք եղբարք էք։ * Եւ հայր մի կոչէք ձեզ յերկրի. զի ձեր մի է 10 հայր որ յերկինսն է։ * Եւ մի կոչիցիք ուսուցիչք՝ զի ուսուցիչ ձեր Ք՟ս է։ 11 * Եւ մեծն ՚ի ձէնջ եղիցի ձեր սպա- 12 սաւոր։ * Որ բարձրացուցանէ զանձն՝ խոնարհեսցի։ և որ խոնարհեցուցանէ 13 զանձն՝ բարձրասցի։ * Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց։ զի փակէք զարքայութիւն երկնից առաջի մարդկան։ դուք ոչ մտանէք. և որոց մտանենն՝ չտայք թոյլ մտանել։

14 * Վա՜յ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց։ զի ուտէք զտունս այրեաց՝ պատճառանօք երկարէք զաղօթս՝ վասնզի աւելի դատաստան ըն- 15 դունիցիք։ * Վա՜յ ձեզ դպրաց և փա-

ԻԶ — 3. Եզր. 8.4. — Ղուկ. 11.46. — Գործ. 15.10. — 2. Օրէ. 6.8. և 22.12. — Թուոց. 15.38. — Մարկ. 12.38. Ղուկ. 11.43. և 20.46. — Յակ. 3.1. — Մաղա. 1.6. — Ղուկ. 14.11. և 18.14. — Մարկ. 12.40. Ղուկ. 20.47.

րիսեցւոց կեղծաւորաց. զի յածիք զծով և զցամաք առնել եկամուտ մի. և յորժամ լինիցի, առնէք զնա որդի գեհենի կրկին ևս քան զձեզ։

16 Վայ ձեզ առաջնորդք կոյրք. զի ասէք՝ որ երդնու ՚ի տաճարն՝ չէ ինչ. բայց որ երդնու յոսկին որ ՚ի տաճարին է՝ պարտական է։ 17 Յիմարք և կոյրք, զի՞նչ մեծ է. ոսկին, եթէ տաճարն, որ սրբէ զոսկին։ 18 Եւ որ երդնու ՚ի սեղանն՝ չէ ինչ. բայց որ երդնու ՚ի պատարագն որ ՚ի վերայ նորա է՝ պարտական է։ 19 Յիմարք, և կոյրք. զի՞նչ մեծ է. պատարագն, եթէ սեղանն որ սրբէ զպատարագն։ 20 Արդ որ երդնու ՚ի սեղանն, երդնու ՚ի նա և յամենայն որ ՚ի վերայ նորա է։ 21 Եւ որ երդնու ՚ի տաճարն, երդնու ՚ի նա և ՚ի բնակիչն նորա։ 22 Եւ որ երդնու յերկինս՝ երդնու յաթոռն Աստուծոյ, և յայն որ նստի ՚ի վերայ նորա։

Ղուկ. 11. 42.

23 Վայ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի տասանորդէք զանանուխ և զսամիթ և զչաման. և թողէք զծանր ծանր օրինացն՝ զդատաստան՝ և զողորմութիւն և զհաւատս. զայս արժան էր առնել՝ և զայն չթողուլ։ 24 Առաջնորդք կոյրք. որք զմժղուկս քամէք՝ և զուղտս կլանէք։ 25 Վայ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի սրբէք զարտաքին զբաժակին և զսկաւառակին. և ՚ի ներքոյ լի են յափշտակութեամբ և անխառնութեամբ։ 26 Փարիսեցի կոյր. սրբեա՛ նախ զներքին բաժակին և զսկաւառակին. զի լինիցի և արտաքինն նոցա սուրբ։ 27 Վայ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի նման էք գերեզմանաց բռելոց. որք արտաքոյ երևին գեղեցիկք. և ՚ի ներքոյ լի են ոսկերօք մեռելոց՝ և ամենայն պղծութեամբ։ 28 Այնպէս և դուք արտաքոյ երևիք մարդկան արդարք. և ՚ի ներքոյ լի էք կեղծաւորութեամբ և անօրէնութեամբ։ 29 Վայ ձեզ դպրաց և փարիսեցւոց կեղծաւորաց. զի շինէք զշիրիմս մարգարէից՝ և զարդարէք զգերեզմանս արդարոց. 30 Եւ ասէք՝ եթէ էաք յաւուրս հարցն մերոց՝ ո՛չ հաղորդէաք արեան մարգարէիցն։ 31 Ապաքէն վկայէք զանձանց. եթէ որդիք էք այնոցիկ՝ որք կոտորէին զմարգարէս։ 32 Եւ դուք լցէք զչափ հարցն ձերոց։

Մտթ. 3. 7.

33 Օձք՝ ծնունդք իժից. զի՞արդ փախնուցուք ՚ի դատաստանէ գեհենին։ 34 Վասն այդորիկ ահաւասիկ ես առաքեմ առ ձեզ մարգարէս՝ և իմաստունս՝ և դպիրս՝ և ՚ի նոցանէ սպանանիցէք, և ՚ի խաչ հանիցէք. և ՚ի նոցանէ տանջիցէք ՚ի ժողովուրդս ձեր՝ և հալածիցէք ՚ի քաղաքէ ՚ի քաղաք։

4. 8.

35 Որպէս զի եկեսցէ ՚ի վերայ ձեր ամենայն արիւն արդար հեղեալ յերկրի. յարենէն Աբելի արդարոյ՝ մինչև ցարիւնն Զաքարիայ որդւոյ Բարաքեայ՝ զոր սպանէք ընդ մէջ տաճարին և սեղանոյն։ 36 Ամէն ասեմ ձեզ՝ եկեսցէ այն ամենայն ՚ի վերայ ազգիս այսորիկ։

11. 4. 2. 24. 22. Ղուկ. 13. 34.

37 Երուսաղէմ, Երուսաղէմ. որ կոտորես զմարգարէս՝ և քարկոծ առնես զառաքեալսն առ քեզ. քանիցս անգամ կամեցայ ժողովել զմանկունս քո՛ զոր օրինակ ժողովէ հաւ զձագս իւր ընդ թևօք. և ո՛չ կամեցայք։ 38 Ահա թողեալ լիցի ձեզ տունդ ձեր աւերակ։ 39 Բայց ասեմ ձեզ. թէ ո՛չ ևս տեսանիցէք զիս յայսմհետէ, մինչև ասիցէք, օրհնեալ եկեալ յանուն Տեառն։



## ԳԼ. ԻԴ.

Մրկ. 13. 2. Ղուկ. 21. 6. Ղուկ. 19. 44.

1 Եւ ելեալ արտաքս Յիսուս ՚ի տաճարէն գնայր՝ և մատեան աշակերտքն ցուցանել նմա զշինուածս տաճարին։ 2 Եւ նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. տեսանէք զայդ ամենայն. ամէն ասեմ ձեզ. ո՛չ մնասցէ այդր քար ՚ի քարի վերայ որ ո՛չ քակտեսցի։ 3 Եւ մինչդեռ նստէր ՚ի լերինն ձիթենեաց. մատեան առ նա աշակերտքն առանձինն և ասեն. ասա՛ մեզ՝ երբ լինիցի այդ. և կամ զի՞նչ նշան իցէ գալստեանն, և վախճանի աշխարհիս։ 4 Պատասխանի ետ Յիսուս և

ասէ

ասէ ցնոսա ։ Զգոյշ լերուք՝ գուցէ ոք զձեզ խաբիցէ ։ 5 * Զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն ․ և զբազումս մոլորեցուցանիցեն ։ 6 * Լսելոց էք պատերազմունս՝ և զհամբաւս պատերազմաց ։ զգոյշ լերուք, մի խռովեսջիք ։ զի պարտ է լինել այնմ ամենայնի, այլ չև է կատարած ։ 7 * Յարիցէ ազգ յազգի վերայ ։ և թագաւորութիւն 'ի թագաւորութեան ։ և եղիցին սովք՝ և սրածութիւնք՝ և սասանութիւնք 'ի տեղիս տեղիս ։ 8 * Սակայն և այն ամենայն սկիզբն է երկանց ։ 9 * Յայնժամ մատնեսցեն զձեզ 'ի նեղութիւն․ և սպանանիցեն զձեզ ։ և եղիջիք ատեցեալք յամենայն ազգաց վասն անուան իմոյ ։ 10 * Եւ յայնժամ գայթագղեսցին բազումք․ և զմիմեանս մատնեսցեն ։ և ատեսցեն զմիմեանս ։ 11 * Եւ բազում սուտ մարգարէք յարիցեն ։ և զբազումս մոլորեցուսցեն ։ 12 * Եւ վասն բազմանալոյ անօրէնութեանն ցամաքեսցի սէր բազմաց ։ 13 * Բայց որ համբերեսցէ իսպառ՝ նա կեցցէ ։ 14 * Եւ քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս․ 'ի վկայութիւն ամենայն հեթանոսաց ։ և ապա եկեսցէ կատարած ։ 15 * Արդ՝ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածոյն, որ ասացեալն է 'ի ձեռն Դանիէլի մարգարէի․ զի կայցէ 'ի տեղւոջն սրբութեան․ որ ընթեռնուն 'ի միտ առցէ ։ 16 * Յայնժամ որք 'ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն 'ի լերինս ։ 17 * Եւ որ 'ի տանիս կայցէ՝ մի իջցէ առնուլ ինչ 'ի տանէ իւրմէ ։ 18 * Եւ որ յանդի իցէ՝ մի դարձցի յետս առնուլ զձորձս իւր ։

19 * Բայց վայ իցէ յղեաց և ստնդիեաց յաւուրսն յայնոսիկ ։ 20 * Յաղօթս կացէք՝ զի մի լիցի փախուստն ձեր ձմերայնի ։ 21 * Եւ մի 'ի շաբաթու․ զի եղիցի յայնժամ նեղութիւն մեծ․ որպիսի ոչ եղև 'ի սկզբանէ արարածոց աշխարհի, մինչև ցայժմ, և ոչ այլ լիցի ։

22 * Եւ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ՝ ոչ ապրէր ամենայն մարմին․ բայց վասն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ ։ 23 * Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ․ ահաւասիկ աստ է Քրիստոսն, կամ անդ՝ մի հաւատայցէք ։ 24 * Զի յարիցեն սուտ քրիստոսք և սուտ մարգարէք․ և տացեն նշանս մեծամեծս և արուեստս․ մինչև մոլորեցուցանել՝ թէ հնար ինչ իցէ և զընտրեալսն ։

25 * Ահա յառաջագոյն ասացի ձեզ ։

26 * Ապա եթէ ասիցեն ձեզ ։ ահաւանիկ յանապատի է՝ մի ելանիցէք ․ և թէ ահա յշտեմարանս է՝ մի հաւատայցէք ։

27 * Զի որպէս փայլակն՝ որ ելանէ յարևելից՝ և երևի մինչև յարևմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ ։ 28 * Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին արծուիք ։ 29 * Վաղվաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի․ և լուսին ոչ տացէ զլոյս իւր․ և աստեղք անկցին յերկնից․ և զօրութիւնք երկնից շարժեսցին ։ 30 * Եւ ապա երևեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս․ և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի ։ և տեսցեն զորդի մարդոյ եկեալ 'ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք ։ 31 * Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ․ և ժողովեսցեն զընտրեալս նորա 'ի չորից հողմոց՝ 'ի ծագաց երկնից մինչև 'ի ծագս նոցա ։ 32 * Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն․ զի յորժամ նորա ոստքն կակղասցին, և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն ։ 33 * Նոյնպէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն՝ գիտասջիք թէ մերձ է 'ի դուրս ։ 34 * Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղիցի ։ 35 * Երկինք և երկիր անցցեն․ և բանք իմ մի անցցեն ։ 36 * Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու ․ ոչոք գիտէ՝ ոչ հրեշտակք երկնից՝ և ոչ որդի՝ բայց միայն հայր ։ 37 * Այլ որպէս աւուրքն Նոյի․ նոյնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ ։ 38 * Զի որպէս էին յաւուրսն՝ որք յառաջ քան զջրհեղեղն․ ուտէին և ըմպէին․ կանայս առնէին՝ և արանց լինէին․ մինչև յօրն յորում եմուտ Նոյ 'ի տապանն ։ 39 * Եւ ոչ գիտացին՝ մինչև եկն ջրհեղեղն՝ և եբարձ զամենեսին․ այնպէս եղիցի և գալուստն որդւոյ մարդոյ ։ 40 * Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առցի, և միւսն թողցի ։ 41 * Եւ եթէ երկու աղայցեն 'ի մի երկանս․ մին առցի, և միւսն թողցի ։ 42 * Արթուն կացէք․ զի ոչ գիտէք յորում ժամու տէրն ձեր գայ ։ 43 * Զայն գիտասջիք եթէ գիտէր տանուտէրն․ յորում պահու գող գայ, հսկէր, և ոչ տայր ական հատանել զտան իւրոյ ։ 44 * Վասն այսորիկ և դուք եղերուք պատրաստք՝ զի յորում ժամու ոչ ակնունիցիք՝ գայ որդի մարդոյ ։ 45 * Իսկ ով իցէ հաւատարիմ ծառայ և իմաստուն․ զոր կացոյց Տէր իւր 'ի վերայ ծառայից իւրոց՝ տալ նոցա զկերակուր 'ի ժամու ։ 46 * Երանի է ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս ։ 47 * Ամէն ասեմ ձեզ՝ զի 'ի վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա ։ 48 * Ապա եթէ ասիցէ ծառայն չար 'ի սրտի իւրում ․ տէ՛ր իմ յամէ

՚զգալ։ 49 *Եւ սկսանիցի հարկանել զծառայակիցս իւր. ուտիցէ և ըմպիցէ ընդ արբեցօղս։ 50 *Գայցէ տէր ծառային այնորիկ յաւուր յորում ոչ ակն ունիցի. և ՚ի ժամու յորում ոչ գիտիցէ։ 51 *Եւ կտրեսցէ զնա ՚ի մէջ. և զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ։ Անդ եղիցի լալ և կրճել ատամանց։

Մէր. 13.42. Մատ. 25.30.

## ԳԼ. ԻԵ.

1 Յայնժամ նմանեսցի արքայութիւն երկնից տասն կուսանաց, որոց առեալ զլապտերս իւրեանց ելին ընդ առաջ փեսայի և հարսին։ 2 *Հինգն ՚ի նոցանէ յիմարք էին. և հինգն իմաստունք։ 3 *Յիմարքն առին զլապտերսն. և զձէթ ընդ իւրեանս ոչ բարձին։ 4 *Իսկ իմաստունքն առին ձէթ ամանօք ընդ լապտերս իւրեանց։ 5 *Եւ ՚ի յամել փեսային՝ նիրհեցին ամենեքեան՝ և ՚ի քուն մտին։ 6 *Եւ ՚ի մէջ գիշերին եղև բարբառ՝ ահա՝ փեսայ գայ՝ արիք ընդ առաջ նորա։ 7 *Յայնժամ յարեան ամ կուսանքն՝ և կազմեցին զլապտերս իւրեանց։ 8 *Ասեն յիմարքն ցիմաստունսն. տուք մեզ ՚ի ձիթոյ ձերմէ. զի ահա շիջանին լապտերքս մեր։ 9 *Պատասխանի ետուն իմաստունքն, և ասեն. գուցէ, ոչ իցէ մեզ և ձեզ բաւական. այլ երթայք ՚ի վաճառականս՝ և գնեսջիք ձեզ։ 10 *Իբրև գնացին նոքա գնել՝ եկն փեսայն՝ և պատրաստքն մտին ընդ նմա ՚ի հարսանիսն՝ և փակեցաւ դուռն։ 11 *Յետոյ գան և այլ կուսանքն՝ և ասեն. Տր Տր՝ բաց մեզ։ 12 *Նա պատասխանի ետ և ասէ. ամէն ասեմ ձեզ՝ թէ ոչ գիտեմ զձեզ։ 13 *Արթուն կացէք՝ զի ոչ գիտէք զօրն՝ և ոչ զժամ։ 14 *Որպէս այր մի գնացեալ ՚ի տար աշխարհ. կոչեաց զծառայս իւր. և ետ նոցա զինչս իւր։ 15 *Ումեմն ետ հինգ քանքար՝ և ումեմն երկուս, ումեմն մի. իւրաքանչիւր ըստ իւրում կարի՝ և գնաց։ 16 *Զօդաւ վաղվաղակի՝ որ էառ զհինգն՝ գործեաց նոքօք. և շահեցաւ այլևս հինգ։ 17 *Նոյնպէս և որ զերկուսն, շահեցաւ այլևս երկուս։ 18 *Եւ որ զմին էառ՝ գնաց, փորեաց զերկիր. և թաքոյց զարծաթ Տն իւրոյ։ 19 *Յետ բազում ժամանակի գայ Տր ծառայիցն այնոցիկ՝ և առնէ համարս ՚ի մէջ նոցա։ 20 *Եւ մատուցեալ՝ որ զհինգ քանքարն էառ՝ մատոյց այլևս հինգ քանքար՝ և ասէ. Տր՝ հինգ քանքար ետուր ցիս. արդ՝ աւասիկ հինգ այլ ևս քանքար ՚ի վր շահեցայ։ 21 *Ասէ ցնա տէրն իւր. ազնիւ ծառայ՝ բարի և հաւատարիմ. որովհետև ՚ի սակաւուդ հաւատարիմ ես, ՚ի վր բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն Տն քոյ։ 22 *Մատուցեալ և որոյ զերկուս քանքարսն առեալ էր՝ և ասէ. տէր՝ երկուս քանքարս ետուր ցիս. ահաւասիկ երկուս ևս այլ քանքարս՝ զորս ՚ի վերայ շահեցայ։ 23 *Ասէ ցնա տէր իւր. ազնիւ ծառայ՝ բարի և հաւատարիմ. որովհետև ՚ի սակաւուդ հաւատարիմ ես՝ ՚ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն Տն քոյ։ 24 *Մատուցեալ և որոյ զմի քանքարն առեալ էր, և ասէ. Տր գիտէի, զի այր մի խիստ ես. հնձես, զոր ոչ սերմանեցեր. և ժողովես, ուստի ոչ սփռեցեր։ 25 *Երկեայ, գնացի, և թաքուցի զքանքարն քո յերկրի. արդ՝ աւասիկ քոյդ զքեզ։ 26 *Պատասխանի ետ տէրն՝ և ասէ ցնա. ծառայ չար և վատ. գիտէիր եթէ հնձեմ. ուստի ոչ սերմանեցի. և ժողովեմ՝ ուստի ոչ սփռեցի։ 27 *Պարտ էր քեզ արկանել զարծաթդ իմ ՚ի սեղանաւորս. և եկեալ ես տոկոսեօք պահանջէի զիմն։ 28 *Արդ՝ առէք ՚ի դմանէ զքանքարդ՝ և տուք այնմ, որ ունիցի զտասն քանքարն։ 29 *Զի ամի, որ ունիցի, տացի և յաւելցի. և որ ոչն ունիցի, և զոր ունիցին, բարձցի ՚ի նմանէ։ 30 *Եւ զծառայդ անպիտան հանէք ՚ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ՝ և կրճել ատամանց։ 31 *Եւ յորժամ եկեսցէ որդի մարդոյ

Մարկ. 13.33. Ղուկ. 19.12.

Մէր. 13.12. Մարկ. 4.25. Ղուկ. 8.18. 19.26.



փա-

փառօք իւրովք եւ ամ հրեշտակք ընդ
նմա․ յայնժամ նստցի յաթոռ փա-
ռաց իւրոց։ *Եւ ժողովեսցին առաջի 32
նր ամ ազգք․ եւ մեկնեսցէ զնս 'ի մի-
մեանց՝ ոպ հովիւ զի մեկնեսցէ զօդիս
յայծեաց ։ *Եւ կացուսցէ զօդիսն 33
ընդ աջմէ իւրմէ՝ եւ զայծիսն 'ի ձախմէ
իւրմէ ։ *Յայնժամ ասասցէ թագաւ- 34
որն ցայնոսիկ՝ որք ընդ աջմէն իցեն․
եկայք օրհնեալք հօր իմոյ՝ ժառանգե
ցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւն
'ի սկզբանէ աշխարհի։*‖Զի քաղցեայ՝ 35 ‖Եսայ․ 58․7․
եւ ետուք ինձ ուտել ։ ծարաւեցայ՝ եւ
արբուցէք ինձ․ օտար էի՝ եւ ժողովե- Եզեկ․ 18․16․
ցէք զիս ։ *Մերկ՝ եւ զգեցուցէք զիս ․ 36
‖հիւանդ էի՝ եւ տեսէք զիս․ 'ի բանտի ‖Սիրաք․ 7․39․
էի՝ եւ եկիք առ իս ։*Յայնժամ պատաս 37
խանի տացեն նմա արդարքն եւ ասա
ցեն․ Տր՝ երբ տեսաք զքեզ քաղցեալ՝
եւ կերակրեցաք․ կամ ծարաւի, եւ ար
բուցաք։*Երբ տեսաք զքեզ օտար, եւ 38
ժողովեցաք․ կամ մերկ, եւ զգեցուցաք ։
*Երբ տեսաք զքեզ հիւանդ, կամ 'ի 39
բանտի՝ եւ եկաք առ քեզ ։ *Պատաս- 40
խանի տացէ թագաւորն՝ եւ ասասցէ
ցնոսա․ ամէն ասեմ ձեզ՝ որովհետեւ
արարէք միում յեղբարցս այսոցիկ փո
քրկանց՝ ինձ արարէք ։ *Յայնժամ 41
ասասցէ եւ ցայնոսիկ՝ որք ընդ ահեկէն
իցեն․‖երթայք յինէն անիծեալք 'ի ‖Սաղմ․ 6․9․
հուրն յաւիտենական․ որ պատրաս-
տեալ է սատանայի եւ հրեշտակաց նր։ Մտթ․ 7․23․
*Զի քաղցեայ, եւ ոչ ետուք ինձ ու- 42
տել․ ծարաւեցայ, եւ ոչ արբուցէք զիս ։ Ղուկ․ 13․27․
*Օտար էի, եւ ոչ ժողովեցէք զիս ․ 43
մերկ էի, եւ ոչ զգեցուցէք զիս ։ հիւանդ
էի՝ եւ 'ի բանտի՝ եւ ոչ տեսէք զիս ։
*Յայնժամ պատասխանի տացեն եւ 44
նոքա՝ եւ ասասցեն՝ Տր երբ տեսաք
զքեզ քաղցեալ՝ կամ ծարաւի , կամ
օտար՝ կամ մերկ՝ կամ հիւանդ՝ կամ
'ի բանտի՝ եւ ոչ պաշտեցաք զքեզ ։
*Յայնժամ պատասխանի տացէ նց եւ 45
ասասցէ․ ամէն ասեմ ձեզ՝ որովհետեւ
ոչ արարէք միում 'ի փոքրկանցս յայս
ցանէ եւ ոչ ինձ արարէք ։ *‖Եւ երթի 46 ‖Դանիէ․ 12․2․
ցեն նք 'ի տանջանսն յաւիտենականս․
եւ արդարքն 'ի կեանսն յաւիտենականս։ Յոհ․ 5․29․

## ԳԼ․ ԻԶ․

Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յս զամ 1
զբանս զայսոսիկ՝ ասէ ցաշա-
կերտսն իւր ։ *‖Գիտէք , զի յետ եր- 2 ‖Մրկ․ 14․1․
կուց աւուրց զատիկ լինի․ եւ որդի մար
դոյ մատնի 'ի խաչ ելանել ։ * Յայն- 3 Ղուկ․ 22․1․
ժամ ժողովեցան քահանայապետքն՝
եւ դպիրք՝ եւ ծերք ժողովրդեանն 'ի
սրահ քահանայապետին՝ որում անուն
4 էր կայիափա ։*Եւ արարին խորհուրդ՝
զի նենգութբ կալցեն զՅս՝ եւ սպան
5 ցեն ։ *Բայց ասէին , թէ մի 'ի տօնի
աստ՝ զի մի խռովութիւն լինիցի 'ի ժո-
6 ղովրդեանն ։ *‖Իբրեւ եկն Յս 'ի բե- ‖Մրկ․
թանիայ 'ի տուն սիմօնի բորոտի ։ 14․3․
7 *Մատեաւ առ նա կին մի․ որ ունէր
շիշ իւղոյ ծանրագնի․‖եւ թափեաց 'ի ‖Յոհ․
8 գլուխ նր 'ի բազմականին ։ * Իբրեւ 11․2․ եւ
տեսին աշակերտքն՝ բարկացան, եւ ա- 12․3․
սեն․ ընդէ՞ր է կորուստ այդ իւղոյդ ։
9 *Զի մարթ էր վաճառել զդա մե
10 ծագնի՝ եւ տալ աղքատաց ։ *Գիտաց
Յս՝ եւ ասէ ցնս․ զի՞ աշխատ առնէք
զկինդ ։ գործ մի բարի գործեաց դա
11 յիս ։*Յամ ժամ զաղքատս ընդ ձեզ
ունիք ։ բայց զիս՝ ոչ համապազ ընդ
12 ձեզ ունիք ։ *Արկանել դորա զիւղդ
'ի մարմին իմ․ առ 'ի թաղելոյ զիս նշա
13 նակեաց ։ *Բայց ամէն ասեմ ձեզ․ զի
ուր քարոզեսցի աւետարանս այս ընդ
ամ աշխարհ, խօսեսցի , եւ զոր արար
14 դա 'ի յիշատակի դորա ։ *‖Յայնժամ ‖Մրկ․
գնաց մի յերկոտասանիցն անուանեալ 14․10․
յուդաս սկարիովտացի առ քահանայա Ղուկ․
15 պետսն, եւ ասէ ։ * Զի՞նչ կամիք տալ 22․4․
ինձ․ եւ ես մատնեցից զնա ձեզ ։ եւ նո
քա կշռեցին նմա երեսուն արծաթի ։
16 *Եւ յայնմհետէ խնդրէր պարապ՝ զի ‖Մրկ․
17 մատնեսցէ զնա նց։*‖Եւ յառաջնում 14․12․
աւուր բաղարջակերացն մատեան ա- Ղուկ․
շակերտքն առ Յիսուս՝ եւ ասեն ։ ո՞ւր 22․7․



կամիս՝ զի պատրաստեսցուք քեզ ուտել զզատիկն: 18 *Եւ նա ասէ ցնս: Երթա՛յք 'ի քաղաքն՝ առ այս անուն. և ասասջի՛ք ցնա: Վարդապետն ասէ՝ ժամանակ իմ մերձեալ է: առ քեզ առնեմ զզատիկս աշակերտօքս հանդերձ: 19 *Եւ արարին աշակերտքն որպէս հրամայեաց նոցա Յս: և պատրաստեցին զզատիկն:

20 *Եւ իբրև երեկոյ եղև՝ կայր բազմեալ ընդ երկոտասան աշակերտսն: 21 *Եւ մինչդեռ ուտէին նոքա՝ ասէ: ամէն ասեմ ձեզ՝ զի մի ոմն 'ի ձէնջ մատնելոց է զիս: 22 *Եւ տրտմեցան յոյժ. սկսան ասել ցնա իւրաքանչիւրոք 'ի նոցանէ՝ միթէ ե՞ս իցեմ Տր: 23 *Նա պատասխանի ետ և ասէ: որ մխեաց ընդ իս զձեռն իւր 'ի սկաւառակդ՝ նա մատնելոց է զիս: 24 *Որդի մարդոյ երթայ որպէս և գրեալ է վն նր. բայց վա՜յ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն որդի մարդոյ մատնեսցի: լաւ էր նմա թէ չէր ծնեալ մարդն այն: 25 *Պատասխանի ետ յուդաս՝ որ մատնելոցն էր զնա՝ և ասէ. միթէ ե՞ս իցեմ վարդապետ: ասէ ցնա՝ դու ասացեր: 26 *Եւ մինչդեռ ուտէին նոքա, էառ Յս հաց. օրհնեաց՝ և եբեկ: և ետ աշակերտացն՝ և ասէ: Առէ՛ք կերա՛յք՝ այս է մարմին իմ: 27 *Եւ առեալ բաժակ գոհացաւ՝ ետ նոցա՝ և ասէ: Արբէ՛ք 'ի դմանէ ամենեքին: 28 *Զի այդ է արիւն իմ նորոյ ուխտի. որ 'ի վն բազմաց հեղանի 'ի թողութի մեղաց: 29 *Բայց ասեմ ձեզ. ո՛չ ևս արբից յայսմհետէ 'ի բերոյ որթոյ՝ մինչև ցօրն ցայն՝ յորժամ արբից զդա ընդ ձեզ նոր յարքայութեն հօր իմոյ: 30 *Եւ օրհնեցին, և ելին 'ի լեառն ձիթենեաց: 31 *Յայնժամ ասէ ցնոսա Յս: Ամենեքին դուք գայթագղելոց էք յինէն յայսմ գիշերի: զի գրեալ է՝ թէ հարից զհովիւն՝ և ցրուեսցին ոչխարք հօտին: 32 *Իսկ յետ յառնելոյն իմոյ՝ յառաջեցից քան զձեզ 'ի գալիլեա: 33 *Պատասխանի ետ պետրոս և ասէ ցնա: թէպէտ և ամենեքեան գայթագղեսցին 'ի քէն. սակայն ես ո՛չ գայթագղեցայց: *Ասէ ցնա Յս՝ ամէն ասեմ քեզ՝ զի յայսմ գիշերի մինչչև հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս. *Ասէ ցնա պետրոս: թէ և մեռանիլ հասանիցէ ընդ քեզ. զքեզ ո՛չ ուրացայց: նոյնպէս և ամ աշակերտքն ասէին:

36 *Յայնժամ գայ Յս ընդ նոսա 'ի գիւղ մի որում անուն էր գեթսեմանի: և ասէ ցնս: նստարո՛ւք այդր. մինչև երթայց կացից յաղօթս: 37 *Եւ առեալ ընդ իւր զպետրոս՝ և զերկուս որդիսն զեբեդեայ՝ սկսաւ տրտմիլ և հոգալ. 38 *Յայնժամ ասէ ցնս: տրտում է ոգի իմ մինչև 'ի մահ. կացէ՛ք աստ՝ և հսկեցէ՛ք ընդ իս: 39 *Եւ մատուցեալ յառաջ սակաւիկ մի՝ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց: եկաց յաղօթս և ասէ: հա՛յր իմ. եթէ հնար է՝ անցցէ՛ բաժակս այս յինէն: բայց ո՛չ որպէս ես կամիմ, այլ որպէս դու: 40 *Գայ առ աշակերտսն՝ և գտանէ զնս 'ի քուն: և ասէ ցպետրոս: այդպէս ո՛չ կարացէք մի ժամ արթուն կալ ընդ իս: 41 *Արթո՛ւն կացէք. և աղօթս արարէք, զի մի՛ անկանիցիք 'ի փորձութի: հոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար: 42 *Դարձեալ երկրորդ անգամ չոգաւ՝ եկաց յաղօթս Յս՝ և ասէ. հա՛յր իմ. եթէ հնար իցէ անցանել յինէն բաժակիս այսմիկ: ապա թէ ոչ՝ արբից զսա: եղիցին կամք քո: 43 *Եւ եկեալ միւսանգամ եգիտ զնս 'ի քուն: զի էին աչք իւրեանց ծանրացեալք: 44 *Եթող զնս՝ և գնաց. եկաց յաղօթս երրորդ անգամ. և դարձեալ 45 զնոյն բան ասաց: *Յայնժամ գայ առ աշակերտսն՝ և ասէ ցնս: ննջեցէ՛ք այսուհետև՝ և հանգերո՛ւք: զի ահա հասեալ է ժամ. և որդի մարդոյ մատնի 'ի ձեռս մեղաւորաց: 46 *Արի՛ք երթիցուք աստի. զի ահաւասիկ եհաս՝ 47 որ մատնելոց է զիս: *Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ ահա յուդաս մի յերկոտասանիցն եկն. և ընդ նմա ամբոխ

Մարկ. 14.17. Ղուկ. 22.14. Յօհ. 13.21. Սաղմ. 40.10. Ա.Կորն. 11.24. Մարկ. 14.27. Յօհ. 16.32. Զաքա. 13.7. Մարկ. 14.28. և 16.7. Յօհ. 13.38. Մարկ. 14.31. Ղուկ. 22.33. Մարկ. 14.43. Ղուկ. 22.47.



բա.

(Յովհ. 18.3.) բազում սրօք՝ և բրօք, 'ի քահանայապետից և 'ի ծերոց ժողովրդեանն։

48 *Եւ որ մատնելոցն էր զնա՝ ետ նոցա նշան և ասէ. ընդ որում ես համբուրեցից՝ նա է, զնա ունիջիք։ 49 *Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յս՟ ասէ. ողջ եր վարդապետ. և համբուրեաց ընդ նմա։ 50 *Եւ Յս՟ ասէ ցնա. ընկեր, վասն որոյ եկիր. յայնժամ մատուցեալ արկին ձեռս 'ի Յս՟. և կալան զնա։ 51 *Եւ ահա մի ոմն յայնցանէ՝ որք էին ը Յի, ձգեաց զձեռն, և էհան զսուր իւր՝ և եհար զծառայ քահանայապետին՝ և 'ի բաց եհան զունկն նորա։

52 *Յայնժամ ասէ ցնա Յիսուս. դարձո զսուր քո 'ի տեղի իւր. զի ամենեքեան՝ որք զսուր առնուցուն՝ սրով անկանիցին։ (Ծննդ. 9. 6. Յայտ. 13. 10.) 53 *Եթէ համարիցիս՝ թէ ոչ կարեմ աղաչել զհայր իմ. և հասուցանիցէ ինձ այսր՝ աւելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց։

(Եսայ. 53. 10.) 54 *Արդ զիա՞րդ լնանիցին գիրք՝ թէ այսպէս պարտ է լինել։ 55 *Յայնժամ ասաց Յս՟ ցամբոխն. իբրև 'ի վր՟ աւազակի ելիք սուսերօք՝ և բրօք ունել զիս. հանապազ առ ձեզ 'ի տաճարին նստէի և ուսուցանէի. և ոչ կալայք զիս։

(Ողբ. 4.20. Մրկ. 14.50.) 56 *Արդ այս ամ՟ եղև՝ զի լցցին գիրք մարգարէիցն. յայնժամ աշակերտքն ամենեքին թողին զնա և փախեան։

(Ղուկ. 22. 54.) 57 *Իսկ նք՟ կալեալ զՅս՟ ածին առ կայիափայ քահանայապետ՝ ուր դպիրք և ծերք ժողովեալ էին։

(Յովհ. 18.24.) 58 *Եւ պետրոս զհետ նր՟ երթայր բացագոյն մինչև 'ի սրահ քահանայապետին. և մտեալ 'ի ներքս նստէր ընդ սպասաւորսն տեսանել զկատարածն։ 59 *Իսկ քահանայապետն՝ և ամ՟ ատեանն խնդրէին սուտ վկայութի՟ զՅսէ. զի սպանցեն զնա։ 60 *Եւ ոչ գտանէին 'ի բազմաց սուտ վկայից մատուցելոց։ յետոյ մատուցեալ երկու սուտ վկայք։

(Յովհ. 2.19.) 61 *Ասէին թէ, սա ասէր՝ կարող եմ քակել զտաճարն Այ՟. և զերիս աւուրս շինել։ 62 *Եւ յարուցեալ քահանայապետն ասէ ցնա. չտա՞ս ինչ պատասխանի. զինչ դոքա ամբաստանեն զքէն։ 63 *Եւ Յս՟ լուռ կայր. պատասխանի ետ քահանայապետն և ասէ ցնա. երդմնեցուցանեմ զքեզ յԱծ՟ կենդանի. զի ասասցես մեզ՝ թէ դու՞ ես Քս՟ն որդի Այ՟. 64 *Ասէ ցնա Յս՟. դու ասացեր. բայց ասեմ ձեզ. յայսմհետէ տեսանիցէք զորդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեն՝ և եկեալ ընդ ամպս երկնից։ (Մտ. 16.27. Հռոմ. 14. 10. Ա. Թես. 4.15.) 65 *Յայնժամ քահանայապետն պատառեաց զհանդերձս իւր, և ասէ. հայհոյեաց. զի՞ ևս պիտոյ են մեզ վկայք. ահա արդ լուայք զհայհոյութի՟ նր՟։



66 *Զի՛նչ հաճոյ է ձեզ. նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է։ 67 *Յայնժամ թքին ընդ երեսս նորա. և կափեցին զնա. և ոմանք ապտակեցին, և ասեն։ (Եսայ. 50.6.) 68 *Մարգարէա՛ց մեզ Քս՟դ՝ ո՞վ է՝ որ եհարն զքեզ։ (Մրկ. 14.65.) 69 *Իսկ պետրոս նստէր արտաքոյ 'ի գաւթին. մատեաւ առ նա աղախին մի, և ասէ. և դու ընդ Յի՟ գալիլեացւոյ էիր։ (Ղուկ. 22. 55.) 70 *Նա ուրացաւ առաջի ամենեցուն և ասէ՝ թէ ոչ գիտեմ զինչ խօսիդ։ (Յովհ. 18. 17.) 71 *Եւ իբրև ել նա արտաքս ընդ դուռն. ետես զնա այլ կին մի. և ասէ ցայնոսիկ՝ որք անդ կային. և սա ընդ Յի՟ նազովրեցւոյ էր։ 72 *Եւ դարձեալ ուրացաւ երդմամբ. թէ ոչ գիտեմ զայրն։ 73 *Եւ յետ սակաւ միոյ մատուցեալ որք կայինն անդ՝ ասեն ցպետրոս՝ արդարև և դու 'ի նոցանէ ես. քանզի և խօսք քո յայտ առնեն զքեզ։ 74 *Յայնժամ սկսաւ նզովել և երդնուլ. թէ ոչ գիտեմ զայրն. և իսկոյն հաւ խօսեցաւ։ 75 *Եւ յիշեաց պետրոս զբանն Յի՟. զոր ասաց՝ թէ մինչև հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս։ և ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս։

## ԳԼ. ԻԷ.

1 Իբրև այգ եղև՝ խորհուրդ արարին ամ՟ քահանայապետք և ծերք ժողովր-



ղովրդեանն վասն Յի սպանանել զնա:

2 *‖Կապեցին զնա. և ածին գնացին. և ետուն ՚ի ձեռս պոնտացւոյ պիղատոսի դատաւորի: [‖ Մարկ. 15.1. Ղուկ. 23.1. Յովհ. 18.28.]

3 *Յայնժամ տեսեալ յուդայի որ մատնեաց զնա՝ թէ պարտաւորեցաւ՝ զղջացաւ: և դարձոյց զարծաթն առ քահանայապետսն և ծերս ժողովրդեանն:

4 *Եւ ասէ՝ մեղայ, զի մատնեցի զարիւն արդար: և նոքա ասեն. մեզ չէ փոյթ. դու գիտես:

5 *Եւ ընկէց զարծաթն ՚ի տաճարն՝ ‖ և գնաց. և չոգաւ խեղդեցաւ: [‖ Գործ. 1.18.]

6 *Իսկ քահանայապետիցն առեալ զարծաթն՝ ասեն: ոչ է արժան ընդունել զայդ ՚ի կորբանն՝ քանզի գինք արեան են:

7 *Խորհուրդ առեալ՝ գնեցին այնու զագարակն բրտի ՚ի գերեզմանս օտարաց:

8 *‖Վասն այնորիկ կոչեցաւ ագարակն այն, ագարակ արեան՝ մինչև ցայսօր: [‖ Գործ. 1.19.]

9 *Յայնժամ լցաւ՝ որ ասացաւ ՚ի ձեռն երեմիայի մարգարէին՝ ‖ առին զերեսուն արծաթին զգինս վաճառելոյն. զոր առին յորդւոցն իլի: [‖ Զաք. 11.13.]

10 *Եւ ետուն զնա յագարակն բրտի. որպէս հրամայեաց ինձ Տր:

11 *Եւ Յս եկաց առաջի դատաւորին: ‖ Եհարց ցնա դատաւորն՝ և ասէ: դու ես թագաւորն հրէից: և Յս ասէ: դու ասես: [‖ Մարկ. 15.2. Ղուկ. 23.3. Յովհ. 18.33.]

12 *Եւ ՚ի չարախօսելն նր ՚ի քահանայապետից և ՚ի ծերոց, ոչինչ ետ պատասխանի:

13 *Յայնժամ ասէ ցնա պիղատոս: ո՞չ լսես՝ որչափ դոքա հակառակ քո վկայեն:

14 *Եւ ոչ ետ նմա պատասխանի՝ և ոչ բան մի, մինչև զարմանալ դատաւորին յոյժ:

15 *Բայց ըստ տօնի սովոր էր դատաւորն արձակել ժողովրդեանն կապեալ մի՝ զոր կամէին:

16 *Ունէին յայնժամ կապեալ մի նշանաւոր՝ որում անուն էր յեսու բարաբբայ:

17 *Իբրև ժողովեցան՝ ասէ ցնոսա պիղատոս: զո՞ կամիք յերկուց աստի՝ զի արձակեցից ձեզ: զյեսու բարաբբա՞յ, եթէ զՅս զանուանեալն Քս:

18 *Քանզի գիտէր՝ թէ առ նախանձու մատնեցին զնա:

19 *Եւ մինչդեռ նստէր յատենին, առաքեաց առ նա կինն իւր՝ և ասէ: չկայ ինչ քո և արդարոյն այնորիկ: զի բազում անցք անցին ընդ իս այսօր յանուրջս վասն նր:

20 *‖Իսկ քահանայապետքն և ծերքն՝ հաւանեցուցին զժողովուրդն՝ զի խնդրեսցեն զբարաբբայն՝ և զՅս կորուսցեն: [‖ Մարկ. 15.11. Ղուկ. 23.18. Յովհ. 18.40. Գործ. 3.14.]

21 *Պատասխանի ետ դատաւորն՝ և ասէ ցնոսա: զո՞ կամիք. զի արձակեցից ձեզ յերկուց այտի: Եւ նոքա ասեն՝ զբարաբբայ:

22 *Ասէ ցնս պիղատոս: իսկ զի՞ արարից զՅս զանուանեալն Քս:

23 *Ասեն ամենեքեան, խաչեսցի. Եւ նա ասէ՝ զի՞նչ չար արար: Եւ նոքա առաւել ևս աղաղակէին և ասէին. խաչեսցի:

24 *Եւ տեսեալ պիղատոսի՝ թէ ոչինչ օգնէ. այլ առաւել խռովութիւն լինի. առեալ ջուր՝ լուաց զձեռս առաջի ժողովրդեանն՝ և ասէ: քաւեալ եմ ես յարենէ արդարոյդ այդորիկ: դուք գիտասջիք:

25 *Պատասխանի ետ ամ ժողովուրդն՝ և ասէ: արիւն դորա ՚ի վերայ մեր և ՚ի վր որդւոց մերոց:

26 *Յայնժամ արձակեաց նց զբարաբբայն. և զՅս գանհարեալ՝ ետ ՚ի ձեռս՝ զի խաչեսցի:

27 *Յայնժամ զինուորք դատաւորին առին զՅս յապարանս. ‖ և ժողովեցին ՚ի վերայ նորա զամ զգունդն: [‖ Մարկ. 15.16.]

28 *Մերկացուցին զնա. և արկին զնովաւ քղամիդ կարմիր:

29 *‖Եւ բոլորեալ պսակ ՚ի փշոց՝ եդին ՚ի գլուխ նր: և եղէգն յաջոյ ձեռին նր: ՚ի ծունր իջեալ առաջի նր՝ կատակէին † և ասէին. ողջ եր թագաւոր հրէից: [Մարկ. 21.17. ‖ Յովհ. 19.2.]

30 *Եւ թքեալ ՚ի նա՝ առնուին զեղէգն՝ և ծեծէին զգլուխ նորա:

31 *Եւ յորժամ ձաղեցին զնա՝ մերկացուցին ՚ի նմանէ զքղամիդն. և ագուցին նմա զիւր հանդերձն: և տարան զնա ՚ի խաչ հանել:

32 *‖Եւ ելեալ արտաքս՝ գտին զայր մի կիւրենացի անուն սիմոն: զնա կալան պահակ՝ զի բարձցէ զխաչն նր: [‖ Մարկ. 15.21. Ղուկ. 23.26.]

33 *‖Եւ եկեալ ՚ի տեղին անուանեալ գողգոթայ որ է տե_ [‖ Մարկ. 15.22.]

տե_

34 տեղւոյ կառափելոյ : *Տային նմա գինի ընդ լեղւոյ խառնեալ : և իբրև ճաշակեաց՝ ոչ կամէր ըմպել :

35 *Եւ հանեալ զնա 'ի խաչ՝ բաժանեցին զհանդերձս նորա վիճակաւ․ զի լցցի բանն որ ասացաւ 'ի մարգարէէն : Բաժանեցին զհանդերձս իմ յիւրեանս՝ և 'ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին :

36 *Եւ նստեալ պահէին զնա :

37 *Եւ եդին 'ի վերայ գլխոյ նորա գրեալ զվնաս նորա : Թէ Սա է Յս թագաւորն հրէից :

38 *Յայնժամ հանին ընդ նմա 'ի խաչ երկուս աւազակս․ մի յաջմէ նորա և մի յահեկէ :

39 *Եւ որք անցանէին, հայհոյէին զնա․ շարժէին ըզգլուխս իւրեանց :

40 *Եւ ասէին : Վա՛հ որ քակէիր զտաճարն և զերիս աւուրս շինէիր զնա՝ ապրեցո՛ զքեզ․ եթէ որդի ես Այ՝ էջ 'ի խաչէդ :

41 *Նոյնպէս և քահանայապետքն ծաղր առնէին հանդերձ դպրօքն և ծերովք՝ և ասէին :

42 *Զայլս ապրեցոյց՝ զինքն ոչ կարէ ապրեցուցանել : Եթէ թագաւոր է Իէլի՝ իջցէ այժմ 'ի խաչէդ՝ և հաւատասցուք դմա :

43 *Եթէ յուսացաւ յԱծ, փրկեսցէ այժմ զդա՝ եթէ կամի զդա․ քանզի ասաց, եթէ Այ որդի եմ :

44 *Զնոյն և աւազակքն որք խաչեալ էին ընդ նմա՝ նախատէին զնա :

45 *Եւ 'ի վեց ժամէ աւուրն խաւար եղև 'ի վերայ ամ երկրի մինչև ցինն ժամ :

46 *Եւ զինն ժամաւն գոչեաց Յս 'ի ձայն մեծ՝ և ասէ : Էլի Էլի՝ լա՛մա սաբաքթանի․ այս ինքն է : Այ իմ, Այ իմ․ ընդէ՞ր թողեր զիս :

47 *Ոմանք յայնցանէ որք անդն կային, իբրև լուա՛ն՝ ասէին : զԵղիա կարդայ :

48 *Եւ վաղվաղակի ընթացաւ մի ոմն 'ի նոցանէ՝ էառ սպունգ լի քացախով՝ և հարեալ յեղեգան՝ ետ ըմպել նմա :

49 *Եւ կէսքն ասէին․ թո՛ղ՝ տեսցուք եթէ գայ Եղիա փրկել զդա :

50 *Եւ Յս դարձեալ աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ և արձակեաց զոգին :

51 *Եւ ահա վարագոյր տաճարին ցելաւ յերկուս՝ 'ի վերուստ մինչև 'ի վայր․ երկիր շարժեցաւ : և վէմք պատառեցան :

52 *Եւ գերեզմանք բացան : և բազում մարմինք ննջեցելոց սրբոց յարեան :

53 *Եւ ելեալք 'ի գերեզմանացն յետ յարութեն նորա, մտին 'ի քաղաքն սուրբ․ և երևեցան բազմաց :

54 *Իսկ հարիւրապետն՝ և որք ընդ նմա պահէին զՅս՝ իբրև տեսին զշարժումն և զեղեալսն՝ երկեան յոյժ՝ և ասեն : արդարև Այ որդի էր սա :

55 *Էին անդ կանայք բազումք : կային 'ի հեռաստանէ՝ և հայէին : որք եկին

Զհի

զհետ Յի 'ի Գալիլեէ պաշտել զնա :

56 *Յորս էր մարիամ մագդաղենացի՝ և մարիամ՝ յակոբայ՝ և յովսէայ մայր : և մայր որդւոցն զեբեդեայ :

57 *Եւ իբրև երեկոյ եղև՝ եկն այր մի մեծատուն յարիմաթեայ՝ որում անուն էր յովսէփ․ որ աշակերտեցաւ իսկ Յի :

58 *Սա մատուցեալ առ պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յի, յայնժամ պիղատոս հրամայեաց տալ զմարմինն :

59 *Եւ առեալ զմարմինն յովսէփ՝ պատեաց սուրբ կտաւով :

60 *Եւ եդ 'ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց 'ի վիմի : և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ և գնաց :

61 *Անդ էր մարիամ մագդաղենացի՝ և միւս մարիամն, նստէին հանդէպ գերեզմանին :

62 *Եւ 'ի վաղիւն անդր՝ որ է յետ ուրբաթուն․ ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիք առ պիղատոս :

63 *Եւ ասեն : տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր, մինչ կենդանին էր : Թէ յետ երից աւուրց յառնեմ :

64 *Արդ՝ հրամայեա՛ զգուշանալ գերեզմանին մինչև ցերիս աւուրս : գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա՝ և ասիցեն ժողովրդեանն՝ թէ յարեաւ 'ի մեռելոց : և լինիցի յետին մոլորութիւն չար քան զառաջինն :

65 *Ասէ ցնոսա պիղատոս : ունիք զզօրականս․ երթա՛յք զգուշացարուք՝ որպէս և գիտէք :

66 *Եւ նոքա եր-



Marginal references: Ղուկ. 23. 33. Յոհան. 19. 17. Մարկ. 15. 24. Ղուկ. 23. 34. Յոհան. 19. 23. Սաղմ. 21. 19. Յոհան. 2. 19. Իմաստ. 2. 18. Սաղմ. 21. 9. խաչեցեալ էին. Սաղմ. 21. 2. 2. Մնաց. 3. 14. Մարկ. 15. 42. Ղուկ. 23. 50. Յոհան. 19. 38.

թեալ զգուշացան գերեզմանին ։ և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։

## ԳԼ։ ԻԸ։

[Մարկ. 16. 1. Յօհա. 20. 11.]

1 Եւ ‖ յերեկոյի շաբաթուն յորում լուսանայր միաշաբաթին․ եկն մարիամ մագդաղենացի, և միւս մարիամն տեսանել զգերեզմանն ։

2 * Եւ ահա շարժումն մեծ եղև ։ զի հրեշտակ Տն իջեալ յերկնից՝ մատուցեալ 'ի բաց թաւալեցոյց զվէմն 'ի դրանց անտի ։ և նստէր 'ի վերայ նր ։ [° 'ի դրանէ]

3 * Եւ էր տեսիլ նր իբրև զփայլակն ։ և հանդերձ նր սպիտակ իբրև զձիւն ։

4 * Եւ յահէ անտի նր խռովեցան պահապանքն․ և եղեն իբրև զմեռեալս ։

5 * Պատասխանի ետ հրեշտակն և ասէ ցկանայսն․ մի՛ երկնչիք դուք․ գիտեմ զի զՅս զխաչելեալն խնդրէք ։

6 * Չէ աստ․ քանզի յարեաւ, որպ ասացն ։ եկա՛յք և տեսէ՛ք զտեղին՝ ուր կայր ։

7 * Եւ վաղվաղակի երթա՛յք ասացէ՛ք աշակերտացն նր թէ յարեաւ՝ և ահա յառաջանայ քան զձեզ 'ի գալիլեայ։ անդ տեսանիցէք զնա ։ ահա ասացի ձեզ ։

8 * Եւ ելեալ վաղվաղակի 'ի գերեզմանէ անտի ահիւ և խնդութբ բազմաւ՝ ընթանային պատմել աշակերտացն ։

9 * Եւ ահա պատահեցաւ նց Յս և ասէ՝ ո՛ղջ էք ։ և նոքա մատուցեալ կալան զոտս նորա՝ և երկիրպագին նմա ։

10 * Յայնժամ ասէ ցնս Յս՝ մի՛ երկնչիք ։ երթա՛յք ասացէ՛ք եղբարցն իմոց՝ զի երթիցեն 'ի գալիլեայ՝ և անդ տեսցեն զիս ։

11 * Իբրև նոքա գնացին, ահա ոմանք 'ի զօրականացն եկին 'ի քաղաքն՝ և պատմեցին քահանայապետիցն զամ որ ինչ եղև ։

12 * Եւ նոքա ժողովեալ հանդերձ ծերօքն, խորհուրդ առեալ՝ արծաթ յոյժ ետուն զօրականացն ։

13 * Եւ ասեն․ ասասջի՛ք՝ եթէ աշակերտքն նր եկեալ գիշերի, գողացան զնա՝ մինչ մեք 'ի քուն էաք ։

14 * Եւ եթէ լուր լինիցի այդ առ դատաւորն, մեք հաճեսցուք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք ։

15 * Եւ նոցա առեալ զարծաթն՝ արարին որպէս ուսանն ։ և ել համբաւս այս 'ի հրէից մինչև ցայսօր ։

16 * Իսկ մետասան աշակերտքն գնացին 'ի գալիլեայ, 'ի լեառնն ուր ժամադիր եղև նոցա Յս ։

17 * Իբրև տեսին զնա՝ երկիր պագին նմա․ և ոմանք երկուացան ։

18 * Եւ մատուցեալ Յս խօսեցաւ ընդ նոսա և ասէ ։ տուաւ ինձ ամ իշխանութի յերկինս և յերկրի։ որպ առաքեաց զիս հայր, և ես առաքեմ զձեզ ։

19 * ‖ Գնացէ՛ք այսուհետև՝ աշակերտեցէ՛ք զամ հեթանոսս։ մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր՝ և Որդւոյ՝ և Հոգւոյն սրբոյ ։ [‖ Մարկ. 16. 15.]

20 * Ուսուցէ՛ք նց պահել զամ՝ զոր ինչ պատուիրեցի ձեզ։ և ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամ աւուրս, մինչև 'ի կատարած աշխարհի ։



Եկն Յս՛ ՚ի Նազարեթէ Գալիլեացւոց․ և մկրտե֊ցաւ ՚ի յոհաննէ ՚ի յորդանան ։ Մարկ․ 1․9․



Եւ էր նա անդ զաւուրս քառասուն փորձեալ ՚ի սա֊տանայէ, և էր ընդ գազանս հրեշտ։ Մարկ․ 1․13․

# ՍՐԲՈՅ ԱՒԵՏԱՐԱՆԻՍ
# ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ․
## ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ։

### Գլուխ Առաջներորդ։

1 ՍԿԻԶԲՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ ՅԻ ՔԻ, որդւոյ ԱՅ։ * 2 Որպէս գրեալ է Եսայի մարգարէ ‖ ահա առաքեմ ես զհրեշտակ իմ առաջի քո․ որ հանդերձեսցէ զճանապարհս քո առաջի քո։ * 3 ‖ Ձայն բարբառոյ յանապատի՝ պատրաստ արարէք զճանապարհ Տն․ և ուղիղս արարէք զշաւիղս նր։ * 4 Եւ եղև՝ զի յոհաննէս մկրտէր յանապատի։ և քարոզէր զմկրտութի ապաշխարութե՛ ՚ի թողութի մեղաց։ * 5 ‖ Եւ երթայր առ նա ամ՛ աշխարհն հրէաստանի․ և

‖ Մաղ․ 3․ 1․ ‖ Եսայ․ 40․ 3․ Մատ․ 3․ 3․ Ղուկ․ 3․ 4․ Յովհ․ 1․23․

Ֆիֆ 2

երուսաղեմացիք ամենեքեան ։ և մկրտէին ՚ի ‖ յորդանան գետ խոստովանեալ զմեղս իւրեանց ։ * 6 ‖ Եւ էր յոհաննէս զգեցեալ ստև ուղտու ։ և գօտի մաշկեղէն ընդ մէջ իւր ։ և կերակուր նր ‖ մարախ և մեղր վայրենի ։ * 7 Քարոզէր և ասէր ․‖ գայ զօրագոյն քան զիս զկնի իմ․ որում չեմ բաւական խոնարհել լուծանել զխրացս կօշկաց նր ։ * 8 ‖ Ես մկրտեցի զձեզ ջրով ։ և նա մկրտեսցէ զձեզ Հոգւով սրբով ։ * 9 Եւ եղև՝ յաւուրսն յայնոսիկ եկն Յս ՚ի Նազարեթէ գալիլեացւոց ․ և ‖ մկրտեցաւ ՚ի յոհաննէ ՚ի յորդանանու ։ * 10 Եւ նոյնժամայն ընդ վերանալ ՚ի ջրոյն՝ ետես ցելեալ զերկինս՝ ‖ և զՀոգին ԱՅ իբրև զաղաւնի ․ զի իջանէր ՚ի վերայ նր ։ * 11 Ձայն եղև յերկնից՝ և ‖ ասէ ․ դու ես Որդի իմ սիրելի ․ ընդ քեզ հաճեցայ ։ * 12 ‖ Եւ նոյնժամայն Հոգին հա֊

‖ Մատ․ 3․ 5․ ‖ Մատ․ 3․ 4․ ‖ Ղևտ․ 11․ 22․ ‖ Մատ․ 3․ 11․ Ղուկ․ 3․16․ Յովհ․ 1․27․ ‖ Գործ․ 1․ 5․ և 2․ 4․ և 11․ 16․ և 19․4․ ‖ Ղուկ․ 3․22․ Յովհ․ 1․32․

Ffffff 2

հանէ զնա յանապատ ։ * Եւ էր նա 13 անդ զաւուրս քառասուն փորձեալ 'ի սատանայէ։ Եւ էր ընդ գազանս. եւ հրեշտակք պաշտէին զնա ։ * Եւ յետ 14 մատնելոյն յովհաննու՝ եկն Յս 'ի գալիլեա՝ քարոզէր զաւետարանն այ եւ ասէր ։ * Թէ կատարեալ է ժամանակ. եւ հասեալ է արքայութիւն այ ։ 15 ապաշխարեցէք, եւ հաւատայք յաւետարանն ։ * Եւ մինչ անցանէր առ ծովեզերբն գալիլեացւոց՝ ետես զսիմոն, եւ զանդրէաս զեղբայր սիմոնի. զի արկեալ էր նց ուռկանս 'ի ծով. քանզի ձկնորսք էին ։ * Եւ ասէ ցնս Յս՝ 16 17 եկայք զկնի իմ, եւ արարից զձեզ լինել որսորդս մարդկան ։ * Եւ վաղվաղակի թողեալ զուռկանսն՝ գնացին զհետ նր ։ * Եւ մատուցեալ ան- 18 19 տի սակաւիկ մի յառաջ՝ ետես զյակոբոս զզեբեդեայ՝ եւ զյովհաննէս զեղբայր նր ։ Եւ զնոսա 'ի նաւին մինչ կարգէին ուռկանս. եւ կոչեաց զնս ։ * Եւ վաղվաղակի թողեալ զհայրն իւրեանց 20 զզեբեդէոս 'ի նաւին վարձկանօքն համդերձ՝ գնացին զհետ նորա ։

Մատ. 4. 1. — Ղուկ. 4. 1. — Բ.Բ — Մատ. 4.12. — Ղուկ. 4. 14. — Յովհ. 4.43. — Մատ. 4.18. — Ղուկ. 5. 2.

Բ.Գ

* Եւ մտանեն 'ի կափառնայում ։ Եւ 21 իսկ եւ իսկ 'ի շաբաթուն մտեալ 'ի ժողովուրդն՝ ուսուցանէր զնս ։ * Եւ 22 զարմանային ընդ վարդապետութի նր ։ զի ուսուցանէր զնոսա իբրեւ իշխանութբ՝ եւ ոչ որպէս դպիրքն ։ * Եւ էր 'ի ժողովրդեանն նց այր մի, 23 յորում այս պիղծ գոյր ։ որ աղաղակեաց եւ ասէ ։ * Թո՛յլ տուր. զի՞ կայ 24 մեր եւ քո՝ Յս նազովրեցի ։ եկիր կորուսանել զմեզ ։ գիտեմք զքեզ, ով ես սրբդ Այ ։ * Սաստեաց 'ի նա Յս եւ 25 ասէ ։ կարկեա՛ց՝ եւ ել 'ի դմանէ ։ * Եւ զարկոյց զնա այսն պիղծ. եւ աղա- 26 ղակեաց 'ի ձայն մեծ. եւ ել 'ի նմանէ ։ * Եւ զարմացան ամենեքին, մինչեւ 27 հծծել ընդ միմեանս եւ ասել ։ զինչ է այս նոր վարդապետութի. զի իշխանութբ՝ եւ այսոց պղծոց սաստէ՝ եւ հնազանդին սմա ։ * Եւ ել լուր նորա ընդ 28 ամ կողմն գալիլեացւոց ։ * Եւ վաղ- 29 վաղակի ելեալ 'ի ժողովրդենէն՝ եկն 'ի տուն սիմոնի եւ անդրէայ՝ յակոբաւ եւ յովհաննու համդերձ ։ * Եւ զոքանչ 30 սիմոնի դնէր ջերմացեալ. եւ վաղվաղակի ասեն ցնա վասն նր ։ * Եւ մա- 31 տուցեալ յարոյց զնա կալեալ զձեռանէ նր ։ Եւ եթող զնա տենդն՝ եւ պաշտէր զնս ։ * Եւ իբրեւ երեկոյ եղեւ 'ի մտա- 32 նել արեգականն, բերէին առ նա զամ հիւանդս՝ եւ զդիւահարս ։ * Եւ էր 33 ամ քաղաքն ժողովեալ առ դրունսն ։ * Եւ բժշկեաց զբազում հիւանդս 'ի 34 պէսպէս ախտից ։ Եւ դեւս բազումս եհան ։ եւ ոչ տայր խօսել դիւացն. զի գիտէին զնա թէ Քս է ։ * Եւ ընդ 35 այգն ընդ առաւօտն յարուցեալ ել, եւ գնաց յանապատ տեղի. եւ անդ կայր յաղօթս ։ * Եւ գնաց զհետ նր սիմոն՝ 36 եւ որք ընդ նմայն էին ։ * Եւ իբրեւ 37 գտին զնա. ասեն ցնա՝ թէ ամենեքին խնդրեն զքեզ ։ * Եւ ասէ ցնս. եկայք, 38 երթիցուք եւ յայլ մօտաւոր գիւղաքաղաքսն՝ զի եւ անդ քարոզեցից ։ զի յայս իսկ եկեալ եմ ։ * Եւ քարոզէր 'ի ժո- 39 ղովուրդս նց ընդ ամ գալիլեացիս. եւ դեւս հանէր ։ * Գայ առ նա բորոտ 40 մի. աղաչէր, 'ի ծունր իջանէր, եւ ասէր ։ Տր՝ եթէ կամիս, կարող ես զիս սրբել ։ * Իսկ Յս գթացեալ ձգեաց 41 զձեռն. մերձեցաւ 'ի նա՝ եւ ասէ ցնա. կամիմ, սրբեա՛ց ։ * Եւ իբրեւ ասաց 42 ցնա, վաղվաղակի գնաց 'ի նմանէ բորոտութին՝ եւ սրբեցաւ ։ * Եւ սաստեալ 43 նմա՝ եհան արտաքս վաղվաղակի՝ եւ ասէ ։ * Զգո՛յշ լեր. մի՛ ումեք ասի- 44 ցես ։ այլ երթ՝ ցո՛յց զքեզ քահանային. եւ մատո՛ վասն սրբութե քո պատարագ՝ զոր հրամայեաց մովսէս 'ի վկայութի նոցա ։ * Եւ նա ելեալ սկսաւ 45 քարոզել յոյժ՝ եւ հռչակ հարկանել զբանն. մինչ ոչ եւս կարող լինել նմա յայտնապէս 'ի քաղաք մտանել ։ այլ արտաքոյ յանապատ տեղիս էր. եւ դային առ նա յամ կողմանց ։

Մատ. 7.28. — Ղուկ. 4. 31. — Ղուկ. 4. 32. — Ղուկ. 4. 33. — Մատ. 8.14. — Ղուկ. 4. 38. — Ղուկ. 4. 41. — Բ.Դ — Մատ. 8. 2. — Ղուկ. 5. 12. — Ղուկ. 14. 2.

## ԳԼ ։ Բ ։

Եւ մտեալ դարձեալ 'ի կափառնայում յետ աւուրց ։ * Լուր եղեւ 1 2 թէ 'ի տան է ։ Եւ ժողովեցան բազումք՝ մինչեւ տեղի եւս ոչ լինել՝ եւ ոչ առ դրանն ։ Եւ խօսէր նոցա զբանն ։ * Եւ գային առ նա՝ բերէին անդա- 3 մալոյծ մի բարձեալ 'ի չորից ։ * Եւ իբրեւ ոչ կարէին մերձենալ առ 4 նա յամբոխէ անտի, քակեցին զյարկն՝ ուր էր Յս ։ Եւ բացեալ զառաստաղն՝ իջուցին զմահիճսն՝ յորում կայր անդամալոյծն ։ * Եւ տեսեալ Յս զհաւա- 5 տս նոցա՝ ասէ ցանդամալոյծն ։ որդեակ՝ թողեալ լիցին քեզ մեղք քո ։ * Եւ էին ոմանք 'ի դպրաց անտի ։ որք 6 անդ նստէին ։ Եւ խորհէին 'ի սիրտս իւրեանց ։ * Զինչ է այս՝ որ խօսի սա 7 զհայհոյութիւս ։ ո՞վ կարէ թողուլ զմեղս՝ եթէ ոչ մի Ած ։ * Եւ գիտաց Յս յոգի իւր՝ թէ այնպէս խորհէին 'ի սիրտս իւրեանց ։ Եւ ասէ՝ զի՞ խորհիք զայդ 'ի սիրտս ձեր ։ * Զինչ դիւրին է 9 ասել ցանդամալոյծն ։ թողեալ լիցին քեզ մեղք քո ։ եթէ ասել՝ արի՛,

Բ.Ե — Մատ. 9. 1. — Ղուկ. 5. 18. — Եսայ. 43. 25.

առ

առ զմահիճս քո՝ և երթ 'ի տուն քո։
*Բայց զի գիտասջիք եթէ իշխանու- 10
թիւն ունի որդի մարդոյ 'ի վր երկրի
թողուլ զմեղս։ (ասէ ցանդամալոյծն)
*Քեզ ասեմ․ արի՛ առ զմահիճս քո՝ 11
և երթ 'ի տուն քո։ *Եւ յարեաւ վաղ 12
վաղակի առեալ զմահիճն՝ ել առա-
ջի ամենեցուն․ մինչև զարմանալ ա-
մենեցուն և փառաւոր առնել զԱծ․
և ասել․ թէ այսպիսի ինչ երբեք ոչ
տեսաք։ *Եւ ել դարձեալ 'ի ծովեզրն․ 13
և ամ ժողովուրդն գայր առ նա․ և
ուսուցանէր զնս։ *‖ Եւ մինչդեռ անց 14
ցանէր․ ետես զՂևի Աղփեայ՝ զի նստ
էր 'ի մաքսաւորութեան․ և ասէ ցնա․
եկ զկնի իմ։ և յարուցեալ գնաց զկնի
նր։ *Եւ եղև 'ի բազմելն նր 'ի տան 15
նր․ և բազում մաքսաւորք բազմեալ
էին ընդ Յի և ընդ աշակերտսն նր։
քանզի էին բազումք՝ որք երթային
զհետ նր։ *Իսկ դպիրքն՝ և փարիսե- 16
ցիք իբրև տեսին թէ ուտէ ընդ մաք-
սաւորս և ընդ մեղաւորս․ ասեն ցա-
շակերտսն նր։ զի՞ է զի ընդ մեղաւորս
և ընդ մաքսաւորս ուտէք և ըմպէք։
*‖ Իբրև լուաւ Յս՝ ասէ ցնս։ ոչինչ է 17
պիտոյ բժիշկ ողջոց՝ այլ հիւանդաց։
և ոչ եկի կոչել զարդարս՝ այլ զմեղաւ-
որս։ *Եւ էին աշակերտքն յոհաննու 18
և փարիսեցիքն 'ի պահս։ գան և ասեն
ցնա․ ընդէ՞ր աշակերտքն յոհաննու՝ և
փարիսեցիքն պահեն։ և քո աշակերտքդ
ոչ պահեն։ *Եւ ասէ ցնս Յս։ միթէ 19
մարթ ինչ իցէ որդւոց առագաստի
մինչ ընդ նոսա իցէ փեսայն՝ պահել։
ցորքան ընդ իւրեանս ունիցին զփե-
սայն, ոչ է մարթ պահել։ *‖ Բայց ե- 20
կեսցեն աւուրք՝ յորժամ վերասցի 'ի
նոցանէ փեսայն․ և ապայ պահեսցեն
յաւուրն յայնմիկ։ *Ոչ ոք կապերտ 21
նոր անթափ արկանէ 'ի վր հնացեալ
ձորձոյ․ ապա թէ ոչ՝ առնու լրութիւն
իւրով նորն 'ի հնոյ անտի․ և չարևս
պատառումն լինի։ *Եւ ոչ ոք արկանէ 22
գինի նոր 'ի տիկս հինս։ ապա թէ ոչ՝
պայթուցանէ գինին զտիկսն։ գինին
հեղանի․ և տիկքն կորնչին։ այլ գի-
նի նոր 'ի տիկս նորս արկանելի է։
*‖ Եւ եղև նմա 'ի շաբաթու անցանել 23
ը արտորայս։ և աշակերտքն 'ի գնալն
իւրեանց սկսան հասկ կորզել և ու-
տել։ *Եւ փարիսեցիքն ասեն ցնա։ 24
տես՝ զինչ գործեն աշակերտքն քո 'ի
շաբաթու՝ զոր չէ արժան։ *Եւ ասէ 25
ցնոսա Յս․ ‖ ոչ երբեք իցէ ընթեր-
ցեալ ձեր՝ զոր արարն Դաւիթ, յոր-
ժամ պիտոյն եղև՝ և քաղցեաւ նա՝ և
որք ընդ նմայն էին։ *Զիարդ եմուտ 26

Բ․Օ
‖ Մատ․ 9. 9․ Ղուկ․ 5.27․
‖ 1 Տիմ․ 1. 15․
‖ Մատ․ 9.15․ Ղուկ․ 5. 35․
Բ․Ի
‖ Մատ․ 12. 1․ Ղուկ․ 6. 1․
‖ 1 Թագ․ 21.6․

'ի տունն Այ առ աբիաթարաւ քահա-
նայապետիւ․ և զհացսն առաջաւորու-
թեան եկեր․ և ետ այնոցիկ որք ընդ
նմայն էին․ զորս ոչ էր օրէն ուտել՝
27 ‖ բայց միայն քահանայից։ *Եւ ասէ
ցնս։ շաբաթ վն մարդոյ եղև․ և ոչ
28 եթէ մարդ վն շաբաթու։ *Ապաու-
րեմն Տր է որդի մարդոյ և շաբաթու։

## Գ Լ ։ Գ․

1 Եւ ‖ եմուտ միւսանգամ 'ի ժողո-
վուրդն․ և էր անդ այր մի որոյ
2 ձեռն գօսացեալ էր։ *Եւ սպասէին
նմա եթէ բժշկիցէ զնա 'ի շաբաթուն՝
3 զի չարախօսեսցեն զնմանէ։ *Եւ ասէ
ցայրն՝ որոյ ձեռն գօսացեալ էր․ արի՛,
4 ա՛նց 'ի մէջ։ *Եւ ասէ ցնոսա․ զի՞նչ
արժան է 'ի շաբաթու․ բարի՞ ինչ գոր-
ծել՝ եթէ չար առնել․ ոգի՞ մի ապրե-
ցուցանել՝ թէ կորուսանել․ և նոքա
5 լռեցին։ *Եւ հայեցեալ Յս զնոքօք
լի ցասմամբ․ տրտմեալ վասն կուրու-
թեան սրտից նոցա․ ասէ ցայրն՝ ձգեա՛
զձեռն քո։ և նա ձգեաց․ և ողջացաւ
6 ձեռն նր։ *‖ Եւ ելեալ արտաքս վաղ
վաղակի փարիսեցիքն հերովդիանոսօքն
հանդերձ, խորհուրդ առնէին վասն
նորա, թէ զիարդ կորուսցեն զնա։
7 *Իսկ Յս աշակերտօքն իւրովք գնաց
'ի ծովեզրն․ և բազում ժողովուրդ
'ի գալիլեացւոց երթային զհետ նր․
8 և 'ի հրէաստանէ։ *Եւ յերմէ՝ և յայն
կոյս յորդանանու․ և որք 'ի տիւրոսէ
և 'ի սիդոնէ․ բազում ժողովուրդ՝
իբրև լսէին՝ որչափ ինչ առնէր՝ գային
9 առ նա։ *Եւ ասէ ցաշակերտսն իւր՝
զի նաւակ մի պատրաստական կայցէ
նմա վասն ամբոխին՝ զի մի՛ նեղեսցեն
10 զնա։ *Քանզի զբազումս բժշկեաց․
մինչ գալ և խուռնիլ զնովաւ, զի մեր-
ձեսցին առ նա․ որք ունէին ախտս ինչ։
11 *Եւ այսք պիղծք յորժամ տեսանէին
զնա՝ անկանէին առաջի նորա․ աղաղա-
12 կէին և ասէին։ *Թէ դու ես որդին
Այ․ և նա յոյժ սաստէր նոցա․ զի
մի՛ յայտնի առնիցեն զնա։
13 *‖ Ելանէ 'ի լեառն․ և կոչէ առ ինքն
զորս ինքն կամեցաւ․ և չոգան առ նա։
14 *Եւ արար երկոտասանս՝ զի իցեն ընդ
նմա․ և զի առաքեսցէ զնս քարոզել․
15 *Եւ ունել իշխանութիւն բժշկելոյ
16 զցաւս՝ և հանելոյ զդևս։*Եւ եդ զա-
17 նուն Սիմոնի՝ Պետրոս։*Եւ յակոբու
Զեբեդեայ, և Յոհաննու եղբօրն
Յակոբայ․ եդ նց անուանս Բանէրե-
18 գէս․ որ է որդիք որոտման։*Եւ զԱն
դրէաս․ և զփիլիպպոս․ և զԲարթու-
ղիմէոս․ զՄատթէոս զմաքսաւորն․ և
զԹո-

‖ Ղևտ․ 24. 9․
‖ Մատ․ 12.9․ Ղուկ․ 6. 6․
Գ․Կ
‖ Մատ․ 12.14․
Գ․Բ
‖ Մատ․ 10.1․ Ղուկ․ 6. 13․

զԹովմաս. եւ զՅակոբոս Աղփեայ. եւ զԹադէոս' եւ զՍիմոն կանանացի: 19 Եւ զՅուդա Իսկարիովտացի. որ եւ մատնեաց զնա: 20 Գան 'ի տուն, եւ գայ միւսանգամ ընդ նոսա ժողովուրդն. մինչ զի եւ զհաց եւս ոչ ժամանել ուտել նց: 21 Եւ իբրեւ լուան' որք իւրքն էին' ելին ունել զնա. զի համարէին թէ մոլեգնեալ իցէ: 22 Եւ դպիրքն' որք յԵրուսաղեմէ իջեալ էին, ասէին ‖ թէ. Բէեղզեբուղ գոյ 'ի դմա. եւ իշխանաւ դիւացն հանէ դա զդեւս: 23 Եւ կոչեալ զնոսա առ ինքն' առակօք խօսէր ընդ նոսա. զիա՞րդ կարէ սատանայ զսատանայ հանել: 24 Եւ արդ' եթէ թագաւորութի յանձն իւր բաժանեսցի, ոչ կարէ կալ թագաւորութի՛ն այն: 25 Եւ եթէ տուն յանձն իւր բաժանեսցի, ոչ կարէ կալ տունն: 26 Եթէ սատանայ 'ի վերայ անձին իւրոյ յարեաւ. եւ բաժանեալ իցէ, ոչ կարէ կալ. այլ վախճանեալ է: 27 Այլ ո՛չ ոք կարէ զկարասի հզօրի մտեալ 'ի տուն նր աւար հարկանել' եթէ ոչ նախ զհզօրն կապիցէ' եւ ապա զտուն նորա աւար հարկանիցէ: 28 ‖ Ամէն ասեմ ձեզ. զի ամենայն թողցի որդւոց մարդկան, մեղք եւ հայհոյութիւնք, որչափ եւ հայհոյիցեն: 29 Բայց որ հայհոյեսցէ զհոգին սբ, ոչ ունիցի զթողութի յաւիտեան. այլ պարտապան լիցի յաւիտենից մեղացն: 30 Զի ասէին, թէ այս պիղծ գոյ 'ի նմա: 31 ‖ Գան եղբարք եւ մայր նորա' եւ արտաքոյ կացեալ յղեցին, եւ կոչէին զնա: 32 Եւ անդ ժողովուրդն շուրջ զնովաւ նստէր. եւ իբրեւ ասացին ցնա, ահաւասիկ մայր քո եւ եղբարք քո' կան արտաքոյ' եւ խնդրեն զքեզ: 33 Պատասխանի ետ նոցա եւ ասէ. ո՞վ է իմ մայր' կամ եղբարք: 34 Հայեցաւ շուրջ զիւրեւ յաշակերտսն զի նստէին. եւ ասէ' ահաւասիկ մայր իմ, եւ եղբարք իմ: 35 Զի որ առնիցէ զկամս ԱՅ, նա է եղբայր իմ. եւ քոյր' եւ մայր:

Գ.Գ. ‖ Մատ. 9.34. ‖ Մատ. 12.31. Ղուկ. 12.10. 1. Յովհ. 5.16. — Գ.Գ. ‖ Մատ. 12.46. Ղուկ. 8.19.

## ԳԼ. Դ.

1 Դարձեալ ‖ սկսաւ ուսուցանել առ ծովեզերբն. եւ ժողովեցան զնովաւ ժողովուրդք բազումք. մինչեւ 'ի նաւ մտանել նմա' եւ նստել 'ի ծովուն. եւ ամենայն ժողովուրդն զծովեզերբն զցամաքն ունէին: 2 Եւ ուսուցանէր զնոսա առակօք բազում ինչ. եւ ասէր նց 'ի վարդապետութե իւրում. լուարուք: 3 Ահաւասիկ ել սերմանօղ 'ի սերմանել: 4 Եւ եղեւ 'ի սերմանելն. ոմն անկաւ առ ճանապարհաւ' եւ եկն թռչունն' եւ եկեր զնա: 5 Եւ այլն անկաւ յապառաժի. ուր ոչ գոյր հող բազում, եւ վաղվաղակի բուսաւ' քանզի ոչ գոյր հիւթ երկրին: 6 Եւ յորժամ ծագեցաւ արեւ, ջեռաւ. եւ զի ոչ գոյին արմատք, ցամաքեցաւ: 7 Եւ այլն անկաւ 'ի մէջ փշոց. ելին փուշքն' եւ հեղձուցին զնա. եւ պտուղ ոչ ետ: 8 Եւ այլն անկաւ յերկիր բարւոք. եւ ելեալ աճեցեալ տայր զպտուղ. եւ բերէր ընդ միոյ երեսուն. եւ ընդ միոյ վաթսուն. եւ ընդ միոյ հարիւր: 9 Եւ ասէր' որ ունիցի ականջս լսելոյ' լուիցէ: 10 Եւ իբրեւ եղեւ առանձինն. հարցին զնա' որք զնովաւն էին աշակերտօքն հանդերձ զառակսն: 11 Եւ ասէ ցնոսա. ձեզ տուեալ է գիտել զխորհուրդ արքայութեն ԱՅ. բայց նոցա որք արտաքինքն են, ա՛մ ինչ առակօք լինի: 12 ‖ Զի տեսանելով տեսցեն' եւ մի տեսցեն. եւ լսելով լուիցեն' եւ մի իմասցին. զի մի երբեք դարձցին' եւ թողցի նոցա: 13 Եւ ասէ ցնոսա. ոչ գիտէք զառակս զայս. եւ զիա՞րդ զա՛մ առակսն գիտիցէք: 14 Որ սերմանէն, զբանն սերմանէ: 15 Եւ նոքա են' որք առ ճանապարհաւն, ուր բանն սերմանի. եւ յորժամ լսեն զնա' գայ սատանայ' եւ հանէ զսերմանեալն 'ի սրտս նոցա: 16 Եւ նոքա են' որք յապառաժին սերմանեցան. որք յորժամ լսիցեն զբանն, վաղվաղակի խնդութբ ընդունին: 17 Եւ զի ոչ ունին արմատս յանձինս. այլ առ ժամանակ մի են. ապա 'ի հասանել նեղութե կամ հալածման վասն բանին, վաղվաղակի գայթագղին: 18 Իսկ որ 'ի մէջ փշոցն սերմանեցաւ' նոքա են. որք իբրեւ զբանն լսեն: 19 ‖ Եւ հոգք աշխարհիս. եւ պատրանք մեծութե մտանեն, եւ հեղձուցանեն զբանն' եւ անպտուղ լինի: 20 Եւ նոքա են' որք յերկիրն բարւոք սերմանեցան. որք լսեն զբանն' եւ ընդունին' եւ տան զպտուղ. ընդ միոյ երեսուն' եւ ընդ միոյ վաթսուն' եւ ընդ միոյ հարիւր: 21 ‖ Եւ ասէ ցնոսա. մի թէ գա՞յ ճրագ' զի ը՟ գրուանաւ դնիցի. կամ ընդ մահճօք. ո՞չ ապաքէն 'ի վ՛ր աշտանակի դնիցի: 22 ‖ Զի չէ' ինչ 'ի ծածուկ' որ թէ ոչ յայտնեսցի. եւ ոչ եղեւ ինչ գաղտնի, եթէ ոչ 'ի յայտ գայցէ: 23 Եթէ ոք ունիցի ականջս լսելոյ' լուիցէ: 24 Եւ ասէ ցնոսա. տեսէք զինչ լսէքդ. եւ յաւելցի ձեզ' որոց լսէքդ. ‖ որով չափով չափէք' նովին չափեսցի ձեզ: 25 ‖ Որոց ունիցի, տացի նմա. եւ որ ոչն ունիցի' եւ զոր ունին' բարձցի 'ի նմանէ:

Գ.Ե. ‖ Մատ. 13.1. Ղուկ. 8.4. — Գ.Զ. ‖ Եսայ. 6.9. Մատ. 13.14. Յովհ. 12.40. Գործ. 28.26. Հռոմ. 11.8. ‖ Ա. Տիմ. 6.17. — Գ.Է. ‖ Մատ. 5.15. Ղուկ. 8.16. 11.33. ‖ Մատ. 10.26. Ղուկ. 8.17. ‖ Մատ. 7.2. Ղուկ. 6.38.

Գ․Կ

26 * Եւ ասէր՝ այսպէս է արքայութիւն Աստուծոյ․ որպէս զի այր մի արկանիցէ զսերմանիս յերկիր։ 27 * Եւ ննջիցէ, եւ յառնիցէ զցայգ եւ զցերեկ․ եւ սերմանիքն բուսանիցին եւ աճիցեն․ եւ նա ո՛չ գիտէ․ 28 * Զի երկիրն ինքնին բերէ զպտուղն․ նախ զխոտն՝ եւ ապա զհասկն՝ ապայ զցորեան ատոք ՚ի հասկին։ 29 * Եւ յորժամ տայցէ զպտուղն, վաղվաղակի առաքի մանգաղ՝ զի հասեալ են հունձք։ 30 * Եւ ասէր․ ընդ՞ ինչ նմանեցուսցուք զարքայութիւն Աստուծոյ․ կամ որո՞վ առակաւ առակեսցուք զնա։ 31 * Որպէս հատն մանանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկիր՝ փոքրագոյն է քան զամենայն սերմանիս՝ որք են յերկրի։ 32 * Եւ յորժամ սերմանիցի, բուսանի, եւ լինի մեծ քան զամենայն բանջար․ եւ արձակէ ոստս մեծամեծս մինչեւ բաւական լինել ընդ հովանեաւ նորա թռչնոց երկնից բնակել։ 33 * Եւ այնպիսի առակօք խօսէր ընդ նոսա զբանն, որպէս կարող լինէին լսել։ 34 * Եւ առանց առակի ոչինչ խօսէր ընդ նոսա․ բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր զամենայն։

Գ․Կ

35 * Եւ ասէ ցնոսա յաւուր յայնմիկ, իբրեւ ընդ երեկս լինէր․ եկա՛յք անցցուք յայն կողմն։ 36 * Թողուն զժողովուրդն․ եւ առնուն զնա նաւաւն հանդերձ․ եւ զայլեւս նաւսն՝ որք էին ընդ նմա։ 37 * Եւ լինէր մրրիկ մեծ հողմոյ․ եւ զալիսն ՚ի նաւն զե- զէր․ մինչ գրեթէ լի՛ եւս լինել։ 38 * Եւ ինքն ննջէր ՚ի խելս նաւին ՚ի վերայ բարձի․ զարթուցանէին զնա եւ ասէին․ վա՛րդապետ՝ ոչինչ է քեզ փոյթ․ զի կորնչիմք աւասիկ։ 39 * Եւ զարթուցեալ սաստեաց հողմոյն․ եւ ծովուն ասէ․ դադարեա՛, կարկեա՛ց․ եւ դադարեաց հողմն․ եւ եղեւ խաղաղութիւն մեծ։ 40 * Եւ ասէ ցնոսա․ ընդէ՞ր այդպէս վատասիրտք էք․ չեւ եւս ունիք հաւատս։ 41 Եւ երկեան յերկիւղ մեծ․ եւ ասէին ցմիմեանս․ ո՛ ոք արդեօք իցէ սա․ զի եւ հողմ եւ ծով հնազանդին սմա։

[Մատթ. 13. 12. և 25. 29. — Ղուկ. 8. 18. և 19. 26. — Մատթ. 13. 31. — Ղուկ. 13. 19. — Մատթ. 8. 23. — Ղուկ. 8. 22.]



## Գ․Լ։ Ե․

1 Եւ եկն յայնկոյս ծովուն յաշխարհն գերգեսացւոց։ 2 * Եւ ընդ ելանելն նորա ՚ի նաւէ անտի, պատահեցաւ նմա այր մի ՚ի գերեզմանացն զոր ունէր այս պիղծ։ 3 * Որոյ բնակութիւն իսկ ՚ի գերեզմանս էր․ եւ ո՛չ շղթայիւք ոք եւս կարէր կապել զնա։ 4 * Վասն բազում անգամ ոտնակապօք եւ շղթայիւք կապելոյ՝ եւ խզելոյ ՚ի նմանէ զշղթայսն․ եւ զոտնակապսն խորտակելոյ․ եւ ոչո՛ք կարէր պարտել զնա։ 5 * Հանապազ զցայգ եւ զցերեկ ՚ի գերեզմանս եւ ՚ի լերինս աղաղակէր․ եւ կոծէր զանձն իւր քարամբք։ 6 * Իբրեւ ետես զՅիսուս ՚ի հեռաստանէ, ընթացաւ եւ երկիրպագ նմա։ 7 * Աղաղակեաց ՚ի ձայն մեծ եւ ասէ, զի՞ կայ իմ եւ քո Յիսուս որդի Աստուծոյ բարձրելոյ․ երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած, մի՛ տանջեր զիս։ 8 * Զի ասէր ցնա՝ ել այսդ պիղծ ՚ի մարդոյ այդի։ 9 * Եւ հարցանէր ցնա՝ թէ զինչ անուն է քո․ եւ ասէ ցնա, ղէգէոն անուն է իմ․ քանզի բազումք եմք։ 10 * Եւ աղաչէին զնա յոյժ․ զի մի՛ առաքեսցէ զնոսա արտաքս քան զաշխարհն։ 11 * Եւ անդ էր առ լերամբն երամակ մի խոզից արօտական մեծ։ 12 * Աղաչեցին զնա ամենայն դեւքն՝ եւ ասեն․ առաքեա՛ զմեզ ՚ի խոզսն, զի մտցուք ՚ի նոսա։ 13 * Եւ հրամայեաց նոցա․ եւ իբրեւ ելին այսքն պիղծք՝ մտին ՚ի խոզսն․ եւ դիմեաց երամակն ՚ի դարէ անտի ՚ի ծովն․ էին իբրեւ երկու հազարք՝ եւ հեղձնուին ՚ի ծովուն։ 14 * Եւ խոզարածքն փախեան․ եւ պատմեցին ՚ի քաղաքին եւ յագարակս․ եւ ելին տեսանել զինչ իցէ՝ որ գործեցաւն։ 15 * Գան առ Յիսուս եւ տեսանեն զդիւահարն՝ զի նստէր զգեցեալ եւ զգաստացեալ՝ որ ունէր զղէգէոնն․ եւ զահի հարան։ 16 * Եւ պատմեցին նոցա որոց տեսեալն էր․ թէ զինչ եղեւ դիւահարին․ եւ զինչ

վասն

[Մատթ. 8. 28. — Ղուկ. 8. 26.]

վասն խողիցն։ 17 * Եւ սկսան աղաչել զնա՝ գնալ 'ի սահմանաց նոցա։ 18 * Եւ իբրեւ եմուտ նա 'ի նաւն՝ աղաչէր զնա դիւահարն՝ զի ընդ նմա իցէ։ 19 * Եւ Յս ոչ ետ նմա թոյլ. այլ ասէ ցնա՝ երթ 'ի տուն քո՝ առ ընտանիս քո. եւ պատմեա նոցա. զորինչ մի անգամ Տր արար քեզ՝ եւ ողորմեցաւ քեզ։ 20 * Եւ չոգաւ՝ եւ սկսաւ քարոզել 'ի Դեկապոլին՝ զորինչ արար նմա Յս. եւ ամենեքին զարմանային։ 21 * Եւ իբրեւ եանց Յս միւսանգամ յայնկոյս, ժողովեցաւ առ նա ժողովուրդ բազում. եւ էր առ ծովեզերբն։

Գ.Գ.

22 *‖ Եւ ահա մի 'ի ժողովրդապետացն գայր՝ որում անուն էր Յայրոս. եւ իբրեւ ետես զնա՝ անկաւ առ ոտս նորա։ 23 * Աղաչէր զնա յոյժ եւ ասէր. թէ դուստր իմ մերձ է 'ի մահ. զի եկեալ դնիցէ նմա ձեռն. որպէս զի ապրեսցի, եւ կեցցէ։

‖ Մատթ. 9.18. Ղուկ. 8.41.

24 * Եւ գնաց ընդ նմա. երթայր եւ ժողովուրդ բազում զհետ նորա. եւ նեղէին զնա։ 25 * Եւ կին մի էր 'ի տեռատեսութենէ արեան՝ զերկոտասան ամ։ 26 * Եւ յոյժ վշտացեալ 'ի բազում բժշկաց. եւ ծախեալ զինչս իւր զամ. եւ չէր ինչ օգտեալ. այլ եւս առաւել զայրացեալ։ 27 * Իբրեւ լուաւ զՅէ, եկն 'ի մէջ ամբոխին յետոյ՝ եւ բուռն եհար զհանդերձէ նորա։ 28 * Քանզի ասէր 'ի միտ, թէ միայն մերձեցայց 'ի հանդերձս նր, փրկեցայց։ 29 * Եւ վաղվաղակի ցամաքեցաւ աղբիւր արեան նր. եւ գիտաց 'ի մարմին իւր՝ թէ բժշկեցաւ 'ի տանջանացն։ 30 * Եւ անդէն վաղվաղակի գիտաց Յս յանձն իւր զզօրութիւն՝ որ ել 'ի նմանէ. դարձաւ յամբոխն եւ ասէ. ո՞վ մերձեցաւ 'ի հանդերձս իմ։ 31 * Եւ ասեն ցնա աշակերտքն. տեսանես, զի ամբոխդ նեղէ զքեզ. եւ ասես, թէ ո՞վ մերձեցաւ 'ի հանդերձս իմ։ 32 * Եւ շուրջ հայէր տեսանել՝ թէ ո՞վ զայն արար։ 33 * Եւ կինն զարհուրեալ եւ դողացեալ վասն որոյ գաղտն արար. քանզի գիտէր՝ զինչ եղեւ նմա. եկն, անկաւ առաջի նորա. եւ ասաց զամ իրան ստուգութե։ 34 * Եւ Յս ասէ ցնա. ‖դուստր՝ հաւատք քո կեցուցին զքեզ. երթ 'ի խաղաղութի. եւ եղիջիր ողջ 'ի տանջանաց քոց։

‖ Ղուկ. 7.50. եւ 8.48.

Գ.Գ.

35 * Մինչդեռ նա զայն խօսէր՝ գան ոմանք 'ի ժողովրդապետէն եւ ասեն. թէ դուստրն քո մեռաւ՝ զի՞ եւս աշխատ առնես զվարդապետդ։ 36 * Իսկ Յս իբրեւ լուաւ զբանն ասացեալ, ասէ ցժողովրդապետն. մի՛ երկնչիր՝ բայց միայն հաւատա՛։ 37 * Եւ ոչ զոք եթող ընդ իւր երթալ. բայց միայն զպետրոս՝ եւ զյակոբոս՝ եւ զյովհաննէս զեղբայրն յակոբայ։ 38 * Գայ 'ի տուն ժողովրդապետին՝ եւ տեսանէ ամբոխ յոյժ. եւ լալականս՝ եւ աղաղակ յոյժ։ 39 * Եւ մտեալ 'ի ներքս՝ ասէ ցնս. զի՞ խռովեալ էք եւ լայք. մանուկդ ոչ է մեռեալ՝ այլ ննջէ։ 40 * Եւ ծաղր առնէին զնա. եւ նորա հանեալ արտաքս զամենեսեան, առնու ընդ իւր զհայր մանկանն եւ զմայր. եւ զնոսա, որք ընդ նմայն էին. եւ մտանէ ուր դնիւր մանուկն։ 41 * Եւ կալեալ զձեռանէ մանկանն՝ ասէ ցնա. տալիթա կումի. որ թարգմանի՝ աղջիկ դու (քեզ ասեմ) արի՛։ 42 * Եւ վաղվաղակի յարեաւ աղջիկն, եւ գնայր. քանզի էր ամաց՝ իբրեւ երկոտասանից. եւ զարմացան մեծաւ զարմանալեաւ։ 43 * Եւ պատուէր տայր նոցա յոյժ, զի մի՛ ոք գիտասցէ զայն. եւ ասաց տալ նմա ուտել։

## ԳԼ. Զ.

Գ.Ի.

1 Եւ ‖ել անտի, եկն 'ի գաւառ իւր. եւ երթային զհետ նր աշակերտքն իւր։ 2 * Եւ եղեւ 'ի շաբաթուն սկսաւ ուսուցանել 'ի ժողովրդեանն. եւ բազումք իբրեւ լսէին, զարմանային ընդ վարդապետութի նր՝ եւ ասէին. ուստի՞ իցէ սմա այս. կամ զի՞նչ իցէ իմաստութիւն՝ որ տուեալ է սմա. զի զօրութիւնք այսպիսիք 'ի ձեռաց սորա լինին։

‖ Մատթ. 13.54. Ղուկ. 4.16. Յովհ. 4.44.

3 *‖ Ո՞չ սա է մանուկ հիւսանն. եւ որդին մարիամայ՝ եղբայր յակոբայ՝ եւ յովսեայ՝ եւ յուդայի՝ եւ սիմոնի, եւ չի՞ցեն քորք դորա աստ առ մեզ. եւ գայթագղէին 'ի նա։

‖ Յովհ. 6.42.

4 * Եւ ասէ ցնոսա. ‖ոչ է մարգարէ անարգ՝ բայց եթէ 'ի գաւառի իւրում եւ յազգատոհմի, եւ 'ի տան իւրում։ 5 * Եւ ոչ կարէր անդ եւ ոչ մի ինչ զօրութի առնել. բայց սակաւ ինչ հիւանդաց ձեռն եդեալ բժշկեր զնոսա։ 6 * Եւ զարմանայր վասն անհաւատութեանց նոցա։ Եւ շրջէր շուրջ զգաւառօքն. եւ ուսուցանէր։

‖ Մատթ. 13.57. Ղուկ. 4.24. Յովհ. 4.44.

Գ.Ժ.

7 *‖ Եւ կոչեաց առ ինքն զերկոտասանսն՝ եւ սկսաւ առաքել զնոսա երկուս երկուս. եւ տայր նոցա իշխանութի 'ի վր այսոց պղծոց։ 8 * Եւ պատուիրեաց նց՝ զի մի՛ ինչ բարձցեն 'ի ճանապարհի. մի՛ բայց միայն գաւազան. մի՛ պարկ՝ մի՛ հաց. մի՛ պղինձ 'ի գօտիս։ 9 *‖ Այլ ագանիլ հողաթափս. եւ մի՛ զգենուցուք՝ ասէ, երկուս պարեգօտս։

‖ Մատթ. 10.1. Մարկ. 3.14. Ղուկ. 9.1.

‖ Գործ. 12.8.

10 * Եւ ասէր ցնոսա. յոր տուն մտանիցէք՝ անդէն օթեվանս կալջիք, մինչեւ ելանիցէք անտի։ 11 * Եւ որք ոչ ընկալցին զձեզ՝ եւ ոչ լուիցեն ձեզ, ‖յոր ժամ ելանիցէք անտի՝ թօթափեսջիք

‖ Մատթ. 10.14. Ղուկ. 9.5.

զփոշի

զփոշի ոտից ձերոց 'ի վկայութիւն նոցա ։
12 *Եւ ելեալ քարոզէին՝ զի ապաշխարեսցեն ։ 13 *Եւ դեւս բազումս հանէին ։ Եւ օծանէին իւղով զբազում հիւանդս . եւ բժշկէին զնոսա ։ 14 *Եւ լուաւ արքայ հերովդէս . ( քանզի յայտնի եղեւ անուն նորա . ) եւ ասէր թէ յովհաննէս մկրտիչ յարեաւ 'ի մեռելոց . եւ վասն այնորիկ զօրութիւնք լինին նովաւ ։
15 *Այլք ասէին թէ եղիաէ . իսկ այլքն թէ մարգարէ է . կամ թէ իբրեւ զմի 'ի մարգարէից ։ 16 *Իբրեւ լուաւ հերովդէս՝ ասէ . զորոյ ես զգլուխն հատի զյովհաննու՝ սա է նա՝ յարեաւ 'ի մեռելոց ։ 17 *Զի ինքն հերովդէս առաքեաց՝ կալաւ զյովհաննէս՝ եւ կապեաց զնա՝ եւ եդ 'ի բանտի վն հերովդիադայ կնոջ փիլիպպոսի եղբօր նորա . զի զնա կին արար զնա ։ 18 *Քանզի ասէր յովհաննէս ցհերովդէս . թէ ոչ է օրէն քեզ ունել զկին եղբօր քոյ ։ 19 *Եւ հերովդիա ոխացեալ էր ընդ նմա՝ եւ կամէր սպանանել զնա . եւ ոչ կարէր ։
20 *Զի հերովդէս երկնչէր 'ի յովհաննէ . քանզի գիտէր զնա այր արդար, եւ սբ . եւ սպասէր նմա . եւ լուեալ 'ի նմանէ՝ բազում ինչ առնէր՝ եւ քաղցրութբ լսէր նմա ։ 21 *Իբրեւ օր մի լինէր պարապոյ՝ յորժամ ընթրիս տայր հերովդէս յաւուր ծննդոց իւրոց՝ նախարարաց իւրոց եւ հազարապետաց . եւ մեծամեծաց գալիլեացւոց ։

Գործ. 13. 51. և 18.6. — Յակ. 5.14. — Դ.Լ. — Մատ. 14.1. 2. — Ղուկ. 9. 7. — Ղուկ. 3.19. — Ղևտ. 18. 16.



ՃԻԷ

22 *Եւ 'ի մտանել դստերն հերովդիայ եւ 'ի կաքաւել, հաճոյ եղեւ հերովդի՝ եւ բազմականացն . ասէ թագաւորն ցաղջիկն . խնդրեա՛ յինէն զորինչ կամիս . եւ տաց քեզ ։ 23 *Եւ երդուաւ նմա բազում անգամ, թէ զորինչ եւ խնդրես ցես դու յինէն՝ տաց քեզ . մինչեւ ցկէս թագաւորութե իմոյ ։ 24 *Նա ելեալ ասէ ցմայր իւր . զի՞նչ խնդրեցից ։ եւ նա ասէ, զգլուխն յովհաննու մկրտչի ։
25 *Եւ մտեալ անդրէն փութանակի առ թագաւորն՝ ասէ, կամիմ, զի տացես ինձ վաղվաղակի 'ի վերայ սկտեղ զգլուխն յովհաննու մկրտչի ։
26 *Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն . այլ վասն երդմանցն եւ կոչնականացն 27 ոչ կամեցաւ անարգել զնա ։ *Եւ առաքեաց վաղվաղակի թագաւորն դահիճ . եւ հրամայեաց բերել զգլուխ նր . եւ չոգաւ գլխատեաց զնա 'ի բանտին ։ 28 *Եւ եբեր զգլուխ նր սկտեղբ՝ եւ ետ ցաղջիկն . եւ աղջիկն տարաւ եւ 29 ետ մօր իւրում ։ *Իբրեւ լուան աշակերտքն նորա, եկին եւ բարձին զմարմին նորա . եւ եդին 'ի գերեզմանի ։
30 *Ժողովեցան առաքեալքն առ Յս՝ եւ պատմեցին նմա զամ ինչ՝ զոր արարին, եւ զոր ուսուցին ։ 31 *Եւ ասէ ցնս Յս . եկա՛յք դուք առանձինն յանապատ տեղի . եւ հանգիջիք սակաւ մի . զի էին բազումք՝ որք երթային եւ գային . եւ հաց անգամ չժամանէին ուտել ։
32 *Եւ գնացին նաւու յանապատ տեղի առանձինն ։ 33 *Եւ տեսին զնոսա՝ զի երթային . եւ զգացին բազումք . եւ հետի յամ քաղաքաց խուռն ընթանային անդր . եւ մերձենային առ նոսա ։
34 *Եւ ելեալ ետես ամբոխ բազում . եւ գթացաւ 'ի նոսա . զի էին իբրեւ ոչխարք՝ որոց ոչ իցէ հովիւ . եւ սկսաւ 35 ուսուցանել զնոսա յոյժ ։ *Եւ իբրեւ բազում ժամ եղեւ, մատուցեալ աշակերտքն ասէին . տեղիս անապատ է .
36 մինչ օր կայ ։ *Արձակեա՛ զժողովուրդ . զի երթեալ շուրջ յագարակս եւ 'ի գեօղս՝ գնեսցեն իւրեանց զինչ ուտիցեն . զի աստ ուտել ինչ ոչ 37 ունին ։ *Նա պատասխանի ետ՝ եւ ասէ ցնս . դո՛ւք տուք դոցա ուտել . ասեն ցնա . երթիցուք, գնեսցուք երկերիւր դահեկանի հաց՝ եւ տացուք դոցա ուտել ։ 38 *Ասէ ցնոսա . քանի՞ նկանակ ունիք՝ երթա՛յք, եւ տեսէ՛ք . իբրեւ գիտացին, ասեն ցնա՛ հինգ , եւ երկուս 39 ձկունս ։ *Եւ հրամայեաց նց բազմել երախանս երախանս 'ի վր դալար 40 խոտոյ ։ *Եւ բազմեցան՝ դասք՝ դասք՝ 41 ուր հարիւր՝ եւ ուր յիսուն ։ *Եւ առեալ

Ծ.Կ — Մատ. 14.13. — Ղուկ. 9.10. — Յովհ. 6. 1. — Ղուկ. 9.10. — Մատ. 9.36. և 14. 14. — Ղուկ. 9. 12. — Յովհ. 6.10.

զհինգ նկանակն և զերկուս ձկունսն՝ հայեցաւ յերկինս. օրհնեաց. մանրեաց զնկանակսն. և ետ ցաշակերտսն զի արկցեն նոցա. և զերկուս ձկունսն բաշխեաց ամենեցուն։ 42 *Կերին ամենեքեան, և յագեցան։ 43 *Եւ բարձին զնշխարսն երկոտասան սակառի լի։ և 'ի ձկանց անտի։ 44 *Եւ էին, որք կերինն՝ իբրև արք հինգ հազար։

ԽԲ

45 *Եւ նոյն ժամայն ստիպեաց զաշակերտսն մտանել 'ի նաւ՝ և յառաջագոյն քան զնա երթալ յայնկոյս 'ի Բեթսայիդայ, մինչ ինքն զժողովուրդսն արձակիցէ։ 46 *Եւ հրաժարեալ 'ի նոցանէ՝ ել 'ի լեառն կալ յաղօթս։ 47 *Եւ իբրև երեկոյ եղև՝ էր նաւն 'ի մէջ ծովուն. և ինքն 'ի ցամաքի։ 48 *‖Եւ ետես զնոսա հողմակոծեալս 'ի վարելն. (զի էր հողմն ընդդէմ նոցա.) և զչորրորդ պահու գիշերոյն գայ առ նոսա գնալով 'ի վերայ ծովուն. և կամէր զանց առնել առ նոքօք։ 49 *Նոքա իբրև տեսին՝ զի գնայր 'ի վերայ ծովուն, համարեցան թէ առաչօք ինչ լինիցի. և զաղաղակ բարձին։ 50 *Զանզի ամենեքեան տեսին զնա՝ և խռովեցան. և նա անդէն վաղվաղակի խօսեցաւ ընդ նոսա և ասէ. քաջալերացարուք՝ ես եմ, մի երկնչիք։ 51 *Եւ ել 'ի նաւն առ նոսա. և դադարեաց հողմն։ Եւ առաւելեալս յիմարեալ էին 'ի միտս իւրեանց՝ և զարմանային յոյժ։ 52 *Զանզի և 'ի վերայ հացին ոչ իմացան. զի էր սիրտ նոցա թմբրեալ։ 53 *‖Եւ իբրև անցին յայնկոյս, եկին յերկիրն Գեննեսարեթ։ 54 *Եւ իբրև ելին 'ի նաւէ անտի, իսկ և իսկ ծանեան զնա արք տեղւոյն այնորիկ։ 55 *Եւ ընթացեալ այսր անդր ընդ ամ գաւառն, սկսան մահճօք բերել զամ հիւանդս՝ ուր լսէին՝ թէ անդ իցէ։ 56 *Եւ ուր և մտանէր 'ի գեօղս՝ կամ 'ի քաղաքս՝ կամ յագարակս, 'ի հրապարակս դնէին զախտաժէտս. և աղաչէին զնա՝ զի գոնէ 'ի քղանցս հան դերձի նր մերձենայցեն. և որք միանգամ մերձեցան, փրկեցան։

‖ Մատ. 14. 25.
‖ Մատ. 14. 34.

## ԳԼ. Է.

ԽԳ

1 Եւ ժողովեցան առ նա փարիսեցիքն՝ և ոմանք 'ի դպրացն, որք եկեալ էին յԵրմէ։ 2 *‖Եւ տեսեալ զոմանս յաշակերտաց անտի, զի խառնակ ձեռօք՝ այսինքն անլուայ ուտէին զհաց, բամբասեցին։ 3 *Զի փարիսեցիքն և ամ հրէայք՝ եթէ ոչ բռնալիր լուանան զձեռս՝ զհաց ոչ ուտեն. քանզի ունին զաւանդութիւն ծերոցն։

‖ Մատ. 15. 2.

4 *Եւ 'ի հրապարակէ մտեալ՝ եթէ ոչ նախ մկրտիցին, ոչ ուտեն։ և այլ ինչ բազում է, զոր ընկալան ունել։ մկրտութիւն բաժակաց՝ և ստամանաց՝ և պղնձեաց՝ և մահճաց։ 5 *Ապա հարցանէին ցնա փարիսեցիքն և դպիրք, թէ ընդէր աշակերտքն քո ոչ գնան ըստ աւանդութեան ծերոցն, այլ խառնակ ձեռօք զհաց ուտեն։ 6 *Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա։ թէ բարւոք մարգարէացաւ Եսայի վասն ձեր կեղծաւորաց։ որպէս գրեալ է. ‖ժողովուրդս այս շրթամբք մեծարէ զիս. և սիրտք նոցա հեռացեալ 'ի բացեայ են յինէն։ 7 *Զուր պաշտեն զիս. ուսուցանեն վարդապետութիւն զմարդկան պատուիրեալս։ 8 *Թողեալ զպատուիրանն Այ՝ ունիք զմարդկան աւանդութիւն։ մկրտութիւն ստամանաց և բաժակաց. և այլոց նմանեաց սոյին առնէք բազումս։ 9 *Եւ ասէ ցնս։ բարւոք խոտէք զպատուիրանն Այ. զի զձեր աւանդութիւն հաստատիցէք։ 10 *Զի մովսէս ասէ ‖պատուեա զհայր քո և զմայր։ ‖և որ չարախօսեսցէ զհօրէ, կամ զմօրէ, մահու վախճանեսցի։ 11 *Եւ դուք ասէք՝ եթէ ասիցէ ոք ցհայր կամ ցմայր՝ կորբան. (որ է պատարագ։) զոր յինէն օգտիցիս։ 12 *Եւ ոչևս տայք թոյլ նմա առնել ինչ՝ հօրն, կամ մօր։ 13 *Եւ անարգէք զբանն Այ ձերով աւանդութեամբ, զոր աւանդեցիք։ և բազում ինչ՝ որ այսմ նման է՝ առնէք։ 14 *‖Եւ կոչեալ առ ինքն զամ ժողովուրդն՝ ասէ ցնս։ լուարուք ինձ ամենեքեան՝ և 'ի միտ առէք։ 15 *Ոչինչ արտաքուստ 'ի մարդ մտեալ՝ եթէ կարիցէ պղծել զնա. այլ որ ելանէ 'ի նմանէ, այն է՝ որ պղծէ զմարդն։ 16 *Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։

ԽԴ

17 *Եւ իբրև եմուտ 'ի տուն յամբոխէ անտի, հարցանէին ցնա աշակերտքն վն առակին։ 18 *Եւ ասէ ցնս։ այդպէս և դուք անմիտք էք. ոչ իմանայք, եթէ ամենայն որ արտաքուստ 'ի ներքս մտանէ 'ի մարդ, ոչ կարէ զնա պղծել։ 19 *Զի ոչ եթէ 'ի սիրտ նորա մտանէ, այլ յորովայն՝ և արտաքս ելանէ. և սրբէ զամ կերակուրսն։ 20 *Եւ ասէր՝ թէ որ ինչ 'ի մարդոյն ելանէ՝ այն պղծէ զմարդ։ 21 *‖Զի 'ի ներքուստ 'ի սրտէ մարդկան խորհուրդք չարութեան ելանեն։ շնութիւնք։ պոռնկութիւնք։ 22 *Գողութիւնք։ սպանութիւնք։ ագահութիւնք։ չարութիւնք։ նենգութիւնք։ գիջութիւն։ չարակնութիւն։ հայհոյութիւն։ ամբարտաւանութիւն։ 23 անզգամութիւն։ *Այս ամ չարիք 'ի ներքուստ ելանեն. և պղծեն զմարդ։ *Եւ

‖ Եսայ. 29. 13.
‖ Ելից. 20. 12.
2. Օրէն. 5. 16.
Եփես. 6. 2.
‖ Ելից. 21. 17.
‖ Ղեւտ. 20. 9.
Ղեւտ. 20. 20.
‖ Մատ. 15. 10.
‖ Օրէն. 6. 5.
Մատ. 15. 19.

24 *‖ Եւ անտի յարուցեալ՝ եկն 'ի սահմանս տիւրոսի և սիդոնի։ և մտեալ 'ի տուն՝ ոչ կամէր յայտնել. և ոչ կարաց ծածկել։ 25 *Լուաւ կին մի զնմանէ, որոյ դուստրն նեղեալ էր յայսոյ պղծոյ։ եկն անկաւ առաջի նորա։ 26 *Եւ կինն էր հեթանոս՝ փիւնիկեցի ասորի յազգէ։ և աղաչէր զնա՝ զի զդեւն հանցէ 'ի դստերէ նր։ 27 *Եւ Յս ասէ ցնա. Թո՛յլ տուր՝ զի նախ՝ յագեսցին մանկունք։ զի ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց։ 28 *Նա պատասխանի ետ և ասէ։ Տր՝ և շունք 'ի փշրանաց սեղանոյ մանկանցն կերակրին։ 29 *Եւ ասէ ցնա։ Վն այդր բանի՝ երթ. ել դեւն 'ի դստերէ քումմէ։ 30 *Գնաց 'ի տուն իւր՝ և եգիտ ելեալ զդեւն. և զդուստրն, զի անկեալ դնիւր 'ի մահիճս։ 31 *Եւ ելեալ միւսանգամ 'ի սահմանացն տիւրոսի և սիդոնի. և եկն 'ի ծովեզրն գալիլեացւոց 'ի մէջ սահմանացն 'ի դեկապօլիս։ 32 *‖ Եւ բերին առաջի նր խուլ մի և համր. և աղաչէին, զի ձեռն դիցէ 'ի վերայ նր։ 33 *Եւ առեալ զնա մեկուսի յամբոխէ անտի, էարկ զմատունս իւր ընդ ականջս նր՝ և եթուք անդր։ և կալաւ զլեզուէ նորա։ 34 *Հայեցաւ յերկինս՝ յոգւոց եհան՝ և ասէ ցնա։ Եփփաթայ՝ որ է բացի՛ր։ 35 *Եւ նոյնժամայն բացան լսելիք նր. և լուծան կապանք լեզուի նր. և խօսէր ուղիղ։ 36 *Եւ պատուիրեաց նց՝ զի մի՛ ումեք ասիցեն։ և որչափ նա պատուիրէր նց՝ նոքա ևս առաւել քարոզէին։ 37 *Եւ ևս քան զևս զարմանային և ասէին. ‖զամ ինչ բարւոք գործեաց սա։ զի խլից լսել տայ՝ և համրոց խօսել։

‖ Մատթ. 15. 21. ‖ Մատթ. 9. 32. Ղուկ. 11. 14. ‖ Ծննդ. 1. 31.

## ԳԼ. Ը.

1 Յաւուրսն ‖ յայնոսիկ դարձեալ ժողովուրդ բազում էր. և ինչ ոչ ունէին ուտել։ կոչեաց զաշակերտսն իւր՝ և ասէ ցնս։ 2 *Գթամ ես 'ի վր ժողովրդեանդ. զի արդ երեք աւուրք են՝ զի առ իս են. և ոչ ունին զինչ ուտիցեն։ 3 *Եւ եթէ արձակեմ զդոսա նօթիս 'ի տունս իւրեանց՝ նքթիցին 'ի ճանապարհի։ զի ոմանք 'ի դոցանէ 'ի հեռաստանէ եկեալ են։ 4 *Պատասխանի ետուն նմա աշակերտքն նորա։ ուստի՞ կարես յագեցուցանել զդոսա հացի՛ յանապատի աստ։ 5 *Եւ հարցանէր զնս. քանի՞ նկանակ հաց ունիք։ և նոքա ասեն եօթն։ 6 *Եւ հրամայեաց ժողովրդեանն բազմել 'ի վր երկրի, և առեալ զեօթն նկանակսն գոհացաւ՝ եբեկ. և տայր յաշակերտսն՝ զի արկցեն։ և արկին առաջի ժողովրդեանն։ 7 *Եւ ձկունս սակաւս ունէին և զայնս ևս օրհնեաց. և հրամայեաց արկանել։ 8 *Կերին՝ և յագեցան՝ և բարձին զնշխարս կոտորոցն եօթն զամբիւղ։ 9 *Եւ էին՝ որք կերինն՝ իբրև չորք հազարք։ և արձակեաց զնոսա։ 10 *Եւ նոյնժամայն մտեալ 'ի նաւ համանգերձ աշակերտօքն՝ եկն 'ի սահմանս դաղմանունեայ։ 11 *‖ Ելին փարիսեցիքն՝ և սկսան վիճել ընդ նմա. և խնդրէին 'ի նմանէ նշան յերկնից փորձել զնա։ 12 *Եւ հառաչեաց յոգի իւր՝ և ասէ։ զի՞ է, զի ազգս այս նշան խնդրէ։ ամէն ասեմ ձեզ, թէ տացի նշան ազգիս այսմիկ։ 13 *Եթող զնս՝ և դարձեալ եմուտ 'ի նաւ՝ և գնաց յայնկոյս։ 14 *‖ Եւ մոռացան զհաց բառնալ. բայց միայն զմի նկանակ ունէին ընդ իւրեանս 'ի նաւին։ 15 *Եւ պատուիրէր նց և ասէր՝ զգո՛յշ եղերուք 'ի խմորոյ անտի փարիսեցւոց՝ և 'ի խմորոյ հերովդիանոսաց։ 16 *Եւ խորհէին ընդ միմեանս և ասէին. թէ զի հացս ոչ ունիմք։ 17 *Գիտաց Յս՝ և ասէ ցնոսա։ զի՞ խորհիք 'ի սիրտս ձեր՝ թերահաւատք՝ թէ զհաց ոչ ունիք. տակաւին ո՞չ իմանայք՝ և ո՞չ յիշէք։ ապշութի ունի զսիրտս ձեր։ 18 *Աչք գոն՝ և ոչ տեսանէք. ականջք են՝ և ոչ լսէք. և ոչ իմանայք տակաւին։ ‖և ոչ յիշէք։ 19 *Յորժամ զհինգ նկանակն 'ի հինգ հազարսն. և քանի՞ սակառի լի բարձիք զկոտորոցն։ և ասեն երկոտասան։ 20 *Եւ յորժամ զեօթն նկանակն 'ի չորս հազարսն. քանի՞ զամբիւղ լի բարձիք զկոտորոցն։ և նոքա ասեն՝ եօթն։ 21 *Եւ ասէ ցնոսա. իսկ զիա՞րդ ոչ իմանայք։ 22 *Գան 'ի բեթսայիդայ. և ածեն առաջի նր կոյր մի. և աղաչէին զնա՝ զի մերձեսցի 'ի նա։ 23 *Եւ առեալ զձեռանէ կուրին՝ եհան արտաքոյ շինին. եթուք յաչս նորա. և ձեռն եդ 'ի վր նորա. և հարցանէր ցնա՝ թէ տեսանիցէ ինչ։ 24 *Հայեցաւ՝ և ասէր. տեսանեմ զմարդիկ՝ զի շրջին իբրև զծառս։ 25 *Դարձեալ եդ զձեռն 'ի վր աչաց նր. եբաց, և տեսանէր։ ողջացաւ, և տեսանէր համարձակ զամ։ 26 *Արձակեաց զնա 'ի տուն իւր, և ասէ։ 'ի շէնդ մի՛ մտանիցես։ այլ երթ 'ի տուն քո։ և յորժամ 'ի շէնն մտանիցես՝ մի՛ ումեք ասիցես 'ի շինին։ 27 *‖ Եւ ել Յս աշակերտօքն համանգերձ 'ի շէնս կեսարեայ փիլիպպեայ։ և 'ի ճանապարհին հարցանէր ցաշակերտսն և ասէր։ ‖զո՞ ոք ասեն զինէն մարդիկ՝ թէ իցեմ։ 28 *Նոքա ետուն պատասխանի և ասեն՝ զՅովհաննէս մկր-

‖ Մատթ. 15. 32. ‖ Մատթ. 16. 1. Ղուկ. 12. 54. ‖ Մատթ. 16. 5. ‖ Մարկ. 6. 41. Յովհ. 6. 11. ‖ Մատթ. 16. 13. ‖ Ղուկ. 9. 18.



տիչ. և այլք զԵղիայ. և այլք՝ զմիոյ՚ի մարգարէից անտի: * 29 Ասէ ցնս. իսկ դուք զո՞ ուստէք ասէք զինէն թէ իցեմ: պատասխանի ետ պետրոս, և ասէ ցնա. դու ես Քս: * 30 Եւ սաստեաց ՚ինոսա՝ զի մի՛ ումեք ասիցեն զնմանէ: * 31 Եւ սկսաւ ուսուցանել զնս, թէ պարտ է որդւոյ մարդոյ բազում չարչարանս ընդունել՝ և անարգիլ յերիցանց և ՚ի քահանայապետից՝ և ՚ի դպրաց: և մեռանիլ. և յերիր աւուր յառնել: * 32 Եւ համարձակ զբանն խօսէր: և առեալ զնա մեկուսի պետրոսի՝ սկսաւ սաստել նմա: * 33 Եւ նա դարձաւ՝ և ետես զաշակերտսն, սաստեաց պետրոսի և ասէ: երթ յետս իմ սատանայ: զի ո՛չ խորհիս դու զայն՝ այլ զմարդկանս: * 34 Եւ կոչեալ առ ինքն զժողովուրդն աշակերտօքն հանդերձ՝ ասէ ցնոսա: ‖ եթէ ոք կամի գալ զկնի իմ, ուրասցի զանձն իւր. և բարձցէ զխաչ իւր՝ և եկեսցէ զկնի իմ:

* 35 ‖ Զի որ կամիցի ապրեցուցանել զանձն իւր՝ կորուսցէ զնա. և որ կորուսցէ զանձն իւր վս աւետարանին՝ ապրեցուսցէ զնա: * 36 Զի՞նչ օգուտ է մարդոյ, եթէ զաշխարհ ամ շահեսցի. և զանձն իւր տուժեսցէ: * 37 Կամ զի՛նչ տացէ մարդ փոխանակ անձին իւրոյ: * 38 ‖ Զի որք ամօթ համարեսցին զիս և զբանս իմ ՚ի շնացող և ՚ի մեղաւոր ազգիս յայսմիկ, և որդի մարդոյ յամօթ արասցէ զնա՝ յորժամ եկեսցէ փառօք հօր իւրոյ՝ և հրեշտակաց սրբոց: * 39 Եւ ասէ ցնս: ‖ ամէն ասեմ ձեզ. զի են ոմանք ՚ի սոցանէ որք աստ կան, որք մի՛ ճաշակեսցեն զմահ. մինչև տեսցեն զարքայութի Այ եկեալ զօրութբ:

‖ Մատթ. 10. 38. և 16.24. Ղուկ. 9. 23. և 14.27. ‖ Ղուկ. 17. 33. Յովհ. 12. 25. ‖ Մատթ. 10.33. Ղուկ. 9. 26. և 12. 9. ‖ Մատթ. 16. 28. Ղուկ. 9. 27.

## ԳԼ: Թ:

Եւ ‖ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յս զՊետրոս՝ և զՅակոբոս՝ և զՅոհաննէս. և հանէ զնս ՚ի լեառն մի բարձր առանձինն: և յայլակերպս եղև առաջի նոցա: * 2 Եւ ձորձք նորա եղեն փայլուն սպիտակ յոյժ, որպէս թափիչք յերկրի՝ ո՛չ կարեն այնպէս սպիտակացուցանել: * 3 Եւ երևեցաւ նց Եղիա մովսէսիւ հանդերձ. որք խօսէին ընդ Յի: * 4 Պատասխանի ետ պետրոս՝ և ասէ ցՅս: ռաբբի, բարւոք է մեզ աստ լինել: և արասցուք երիս տաղաւարս: մի քեզ: և մի մովսէսի: և մի եղիայի: * 5 Քանզի ո՛չ գիտէր զինչ խօսէր: զի զարհուրեալ էին: * 6 Եւ եղև ամպ մի հովանի ՚ի վր նց: ձայն եղև յամպոյ անտի և ասէ: դա է որդի իմ սիրելի՝ դմա լուարուք:

‖ Մատթ. 17. 1. Ղուկ. 9. 28.

7 * Եւ յանկարծակի հայեցեալ այսր անդր՝ ո՛չ ևս զոք ուրեք տեսին: բայց միայն զՅս ընդ իւրեանս: 8 * ‖ Եւ մինչ դեռ իջանէին ՚ի լեռնէ անտի, պատուէրեաց նց՝ զի մի՛ ումեք պատմեսցեն, զոր տեսին: բայց յորժամ որդի մարդոյ ՚ի մեռելոց յարիցէ: 9 * Եւ նոքա զբանն ՚ի միտ ունէին: և խնդրէին ը միմեանս, թէ զինչ իցէ ՚ի մեռելոցն յառնել: 10 * Հարցին ցնա և ասեն. ‖ զի՞նչ է այն՝ զոր դպիրքն ասեն, եթէ նախ եղիայի պարտ է գալ: 11 * Նա պատասխանի ետ նց և ասէ: եղիա նախ եկեալ յարդարեսցէ զամ: ‖ իսկ զիարդ գրեալ է զորդւոյ մարդոյ: զի բազում ինչ չարչարեսցի, և 12 անգոսնեսցի: * ‖ Այլ ես ասեմ ձեզ, եթէ եղիա եկն, (և արարին ընդ նմա զինչ և կամեցան:) ոպ և գրեալ է վն 13 նր: * Եւ եկեալ առ աշակերտսն, տեսին ամբոխ շուրջ զնոքօք. և զդպիրսն, 14 զի վիճէին ընդ նոսա: * Եւ վաղվաղակի ամ ժողովուրդն իբրև տեսին զնա, զարմացան. և ընդ առաջ ընթա15 ցեալ՝ ողջոյն տային նմա: * Եւ եհարց ցնս, թէ զի՛նչ վիճէիք ընդ նոսա: 16 * ‖ Պատասխանի ետ միոմն ՚ի ժողովրդենէն և ասէ: վարդապետ, ածի զորդի իմ առ քեզ. զոր ունի այս համր: 17 * Եւ ուր հասանի՝ զարկուցանէ զնա՝ և փրփրէ: և կրճտէ զատամունս իւր՝ և ցամաքի: և ասացի ցաշակերտսն քո՝ զի

‖ Մատթ. 17.9. ‖ Մաղ. 4. 5. ‖ Եսայ. 53. 3. ‖ Մատթ. 17.12. Օ.Բ. ‖ Ղուկ. 9. 38.

զի հանցեն, և ոչ կարացին հանել զնա։
18 *Պատասխանի ետ նց և ասէ. ով ազգ անհաւատ՝ մինչև յե՞րբ իցեմ առ ձեզ. մինչև ցե՞րբ անսայցեմ ձեզ. ածէ՛ք զնա առ իս։
19 *Եւ ածին զնա առ նա։ Իբրև ետես զնա այսն՝ վաղվաղակի շարժլեաց զնա։ և անկեալ յերկիր թաւալէր՝ և փրփրայր։
20 *Եհարց ցհայր նր և ասէ. քանի՞ ժամանակք են յորմէհետէ այդ եղև դմա։ և նա ասէ. 'ի մանկութէ։
21 *Բազում անգամ 'ի հուր արկանէ զդա և 'ի ջուր, զի կորուսցէ. արդ՝ թէ կարող ինչ ես, օգնեա՛ մեզ Տէր գթացեալ 'ի վերայ մեր։
22 *Եւ Յս ասէ ցնա. ասացեր՝ թէ կարող ես. ամ՛ ինչ հնարաւոր է այնմ, որ հաւատայն։
23 *Եւ վաղվաղակի աղաղակեաց հայր մանկանն և ասէ։ հաւատամ Տէր. օգնեա՛ անհաւատութեան իմում։
24 *Իբրև ետես Յս եթէ կուտի ժողովուրդն 'ի վր, սաստեաց այսոյն պղծոյ և ասէ. համրդ և խուլ այս. ես տամ քեզ հրաման. ե՛լ 'ի դմանէ. և այլ ևս մի՛ մտանիցես 'ի դա։
25 *Եւ աղաղակեաց՝ և յոյժ լլկեաց զնա՝ և ել։ և եղև պատանեակն իբրև զմեռեալ. մինչև բազմաց իսկ ասել թէ մեռաւ։
26 *Եւ Յս կալաւ զձեռանէ նորա, յարոյց զնա. և կանգնեցաւ։
27 *Եւ իբրև եմուտ նա 'ի տուն, աշակերտքն առանձինն հարցին ցնա։ մեք ընդէ՞ր ոչ կարացաք հանել զնա։
28 *Եւ ասէ ցնս. այդ ազգ ոչ իւիք ելանէ, եթէ ոչ պահօք և աղօթիւք։

ՕԳ. 29 *Եւ անտի ելեալ անցանէին առ գալիլեացւովք։ և ոչ կամէր եթէ ոք գիտասցէ։

‖ Մատ. 17. 21. Ղուկ. 9. 22. և 44.

30 *‖ Զանզի ուսուցանէր զաշակերտսն իւր՝ և ասէր ցնոսա, թէ որդի մարդոյ մատնելոց է 'ի ձեռս մարդկան. և սպանցեն զնա. և իբրև սպանցի՝ յերիր աւուր յարիցէ։
31 *Եւ նոքա ոչ գիտէին զբանն. և երկնչէին հարցանել ցնա։
32 *Եկն 'ի կափառնաում։ և իբրև եմուտ 'ի տունն՝ հարցանէր զնոսա. զի՞նչ վիճէիք զճանապարհայն ընդ միմեանս։
33 *Եւ նոքա լուռ լինէին. քանզի ընդ միմեանս վիճէին 'ի ճանապարհին ‖ թէ ո՞վ մեծ իցէ։

‖ Ղ՟ ւկա՟ ցանէ. ‖ Մատ. 18. 1. Ղուկ. 9. 46.

34 *Եւ իբրև նստաւ՝ կոչեաց զերկոտասանսն և ասէ ցնոսա. եթէ ոք կամի առաջին լինել՝ եղիցի ամենեցուն կրտսեր՝ և ամենեցուն պաշտօնեայ։
35 *Եւ առեալ մանուկ մի՛ կացոյց 'ի մէջ նոցա. և ընկալեալ զնա 'ի գիրկս իւր, ասէ ցնոսա։



36 *Որ միանգամ յայսպիսւոյ մանկանց ընկալցի յանուն իմ, զիս ընդունի։ և որ զիս ընդունիցի, ոչ զիս ընդունի, այլ զայն՝ որ առաքեացն զիս։
37 *‖ Պատասխանի ետ նմա յովհաննէս և ասէ։ վա՛րդապետ՝ տեսաք զոմն. որ յանուն քո դևս հանէր՝ և զմեր կնի ոչ
38 շրջէր՝ և արգելաք զնա։ *Եւ նա ասէ մի՛ արգելուք զնա։ ‖ զի ոչո՛ք է, որ առնէ զօրութիւս յանուն իմ. և կարիցէ
39 հայհոյել զիս։ *Զի որ ոչն է ընդ մեզ
40 հակառակ, 'ի մե՛ր կողմն է։ *‖ Եւ որոք արբուսցէ ձեզ ջուր բաժակաւ յանուն յայս, թէ դուք Քի էք, ամէն ասեմ ձեզ՝ մի՛ կորուսցէ զվարձս իւր։
41 *‖ Եւ որոք գայթագղեցուսցէ զմի 'ի փոքրկանցս՝ որք հաւատան յիս, լաւ էր նմա առաւել՝ եթէ արկեալ էր ընդ պարանոց նր երկան իշոյ և ընկեցեալ
42 'ի ծով։ *‖ Եւ եթէ գայթագղեցուսցէ զքեզ ձեռն քո՝ հատ՝ ընկեա՛ 'ի քէն։ լաւ իցէ քեզ խեղ մտանել 'ի կեանսն յաւիտենից՝ քան երկուս ձեռս ունիլ, և երթալ 'ի գեհեն 'ի հուրն անշէջ։
43 *‖ Ուր որդն նց ոչ մեռանի՝ և հուրն
44 ոչ շիջանի։ *Եւ եթէ ոտն քո գայթագղեցուսցէ զքեզ, հա՛տ՝ և ընկեա՛ զնա 'ի քէն. լաւ իցէ քեզ կաղ մտանել 'ի կեանսն յաւիտենից, քան երկուս ոտս ունիլ և արկանիլ 'ի գեհեն
45 'ի հուրն անշէջ։ *Ուր որդն նց ոչ մե-
46 ռանի՝ և հուրն ոչ շիջանի։ *Եւ եթէ

‖ Ղուկ. 9. 49. ‖ 1. Կորն. 12. 3. ‖ Մատ. 10. 42. ‖ Մատ. 18. 6. Ղուկ. 17. 1. ‖ Մատ. 5. 30. և 18. 8. Ղուկ. 17. 2. ‖ Եսայ. 66. 24.

աչք քո գայթագղեցուցանէ զքեզ, հան զնա 'ի բաց: լաւ է քեզ միով ակամբ մտանել յարքայութիւն այ, քան երկուս աչս ունել՝ եւ անկանել 'ի գեհեն: 47 * Ուր որդն նոցա ոչ մեռանի՝ եւ հուրն ոչ շիջանի: 48 * Զի ամ ինչ հրով յաղեսցի: եւ ամ ողջակէզ աղիւ յաղեսցի: 49 * Բարւոք է աղ: եւ եթէ աղն անհամ լիցի, իւ համեմեսցի: արդ՝ կալարուք յանձինս ձեր զաղն՝ եւ խաղաղութիւն արարէք ընդ միմեանս:

Ղեւտ. 2. 13. Մատ. 5. 13. Ղուկ. 14. 34.

## ԳԼ. Ժ.

ԶԳ

1 Եւ անտի յարուցեալ գայ 'ի սահմանս Հրէաստանի յայնկոյս Յորդանանու: եւ երթայր դարձեալ խուռնեալ ժողովուրդն առ նա. եւ որպէս սովոր էր՝ միւսանգամ ուսուցանէր զնս: 2 * Իսկ փարիսեցիքն մատուցեալ փորձելով հարցանէին զնա՝ եւ ասէին. եթէ արժա՞ն իցէ առն զկին իւր արձակել: 3 * Նա պատասխանի ետ նոցա եւ ասէ: զի՞նչ պատուիրեաց ձեզ Մովսէս: 4 * Եւ նոքա ասեն. Մովսէս հրաման ետ զգիր մեկնելոյ գրել, եւ արձակել: 5 * Պատասխանի ետ Յս՝ եւ ասէ ցնս: վասն խստասրտութեան ձերոյ գրեաց զպատուիրանն զայն: 6 * Բայց 'ի սկզբանէ արարածոց, արու եւ էգ արար զնս Ած եւ ասէ: 7 * Վասն այսորիկ թողցէ այր զհայր իւր եւ զմայր. եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ: 8 * Եւ եղիցին երկոքեան 'ի մարմին մի: եւ այսուհետեւ ոչ են երկու՝ այլ մարմին մի: 9 * Արդ՝ զոր Ած զուգեաց՝ մարդ մի մեկնեսցէ: 10 * Եւ 'ի տան դարձեալ աշակերտքն զնոյն հարցին ցնա: 11 * Եւ ասէ ցնոսա: եթէ այր արձակեսցէ զկին իւր՝ եւ առնուցէ այլ՝ շնայ: 12 * Եւ կին եթէ ելցէ յառնէ իւրմէ, եւ եղիցի առն այլում, շնայ: 13 * Եւ մատուցանէին առ նա մանկտի, զի ձեռն դիցէ նոցա: իսկ աշակերտքն սաստէին այնոցիկ՝ որք մատուցանէին: 14 * Իբրեւ ետես Յս, բարկացեալ սաստեաց նոցա եւ ասէ: թո՛յլ տուք մանկտւոյդ գալ առ իս. եւ մի՛ արգելուք զդոսա: զի այդպիսեացդ է արքայութիւն այ: 15 * Ամէն ասեմ ձեզ: որ ոչ ընկալցի զարքայութիւն այ իբրեւ զմանուկ՝ ոչ մտցէ 'ի նա:

16 * Եւ առեալ զնս 'ի գիրկս՝ ձեռն եդ 'ի վր՝ եւ օրհնեաց զնոսա: 17 * Եւ ընդ ելանել նր անտի 'ի ճանապարհ, ահաւասիկ ոմն մեծատուն ընթացեալ 'ի ծունր իջանէր. հարցանէր ցնա՝ եւ ասէր: Վարդապետ բարի. զի՞նչ արարից՝ զի զկեանսն յաւիտենականս ժառանգեցից: 18 * Եւ Յս ասէ ցնա: զի՞ ասես զիս բարի: չի՛ք ոք բարի, բայց մի Ած: 19 * Զպատուիրանս գիտես: Մի՛ շնար: մի՛ սպանաներ: մի՛ գողանար: մի՛ սուտ վկայեր: † պատուեա՛ զհայր քո եւ զմայր: 20 * Նա պատասխանի ետ եւ ասէ ցնա: վարդապետ՝ զայդ ամ արարի 'ի մանկութենէ իմմէ. արդ՝ զի՞նչ եւս պակաս իցեմ: 21 * Եւ Յս հայեցեալ 'ի նա՝ սիրեաց զնա. եւ ասէ ցնա. մի ինչ պակաս է 'ի քէն. եթէ կամիս կատարեալ լինել, երթ՝ զորինչ ունիս վաճառեա՛, եւ տո՛ւր աղքատաց՝ եւ ունիցիս գանձս յերկինս. եւ ա՛ռ զխաչն, եւ եկ զկնի իմ: 22 * Եւ նա խոժոռեալ ընդ բանն՝ գնաց տրտում. զի ունէր ինչս բազումս: 23 * Եւ հայեցեալ յայս կոյս յայն կոյս Յս. ասէ ցաշակերտսն: զի ո՞րդ դժուարին է, որք զինչսդ ունին, մտանել յարքայութիւն Այ: 24 * Եւ աշակերտքն զարմացեալ էին 'ի վր բանիցն նր: իսկ Յս դարձեալ պատասխանի ետ նց եւ ասէ: որդեակք՝ որչափ դժուարին է յուսացելոց յինչս՝ մտանել յարքայութիւն Այ: 25 * Դիւրին է մալխոյ ընդ ծակ ասղան անցանել՝ քան մեծատան յարքայութիւն այ մտանել: 26 * Եւ նոքա առաւել եւս զարմանային՝ եւ ասէին ընդ միմեանս. իսկ ո՞վ կարասցէ ապրել: 27 * Հայեցեալ ընդ նոսա Յս՝ ասէ: առ 'ի մարդկանէ այդ անհնարին է: այլ ոչ առ յԱյ: զի ամենեքեան կարելիք են առ Ած:

ԶԴ

28 * Սկսաւ ասել ցնա պետրոս: ահաւասիկ մեք թողաք զամ եւ եկաք զկնի քո: 29 * Պատասխանի ետ Յս եւ ասէ: ամէն ասեմ ձեզ. ոչո՛ք է՝ որ եթող զտուն՝ կամ զեղբարս՝ կամ զքորս՝ կամ զհայր՝ կամ զմայր՝ կամ զորդիս՝ կամ զագարակս վն իմ՝ կամ վն աւետարանին: 30 * Եթէ ոչ առնուցու հարիւրապատիկ այժմ յայսմ ժամանակի տունս՝ եւ եղբարս՝ եւ քորս՝ եւ զմայր՝ եւ որդիս՝ եւ ագարակս՝ հալածանօք հանդերձ. եւ յաշխարհին որ գալոցն է՝ զկեանսն յաւիտենականս: 31 * Զի բազումք եղիցին առաջինք յետինք՝ եւ յետինք առաջինք: 32 * Եւ էին 'ի ճանապարհի մինչդեռ ելանէին յԵրուսաղէմ. եւ երթայր Յս առաջի քան զնս: եւ զարմացեալ էին՝ որք զհետն երթային՝ եւ երկնչէին:

ԶԵ

Եւ առեալ միւսանգամ զերկոտասանսն առանձինն, սկսաւ ասել նոցա որինչ անցք անցանելոց իցեն ընդ նա: 33 * Թէ ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ: եւ որդի մարդոյ մատնեսցի քահանայապետից եւ դպրաց: եւ դատապարտեսցեն զնա 'ի մահ. եւ մատնեսցեն զնա հեթանոսաց: 34 * Եւ կատակեսցեն զնո

վաւ

Մատ. 19. 1. Օրէն. 24. 1. Ծննդ. 1. 27. Ծննդ. 2. 24. Մատ. 19. 5. 1. Կորն. 7. 10. Եփես. 5. 31. 1. Կորն. 6. 16. Մատ. 19. 16. Ղուկ. 18. 18. Ղուկ. 20. 13. Մատ. 19. 27. Ղուկ. 18. 28. Մատ. 19. 30. Ղուկ. 18. 31.

վաւ՝ և հարկանիցեն զնա՝ և թքանի-
ցեն 'ի նա՝ և սպանցեն. և յերիր աւուր
յարիցէ ։ * Եւ երթային առ նմա 35
յակոբոս և յովհաննէս՝ որդիքն զեբե-
դեայ. և ասեն ցնա. վարդապետ, կա
միմք զի զորինչ խնդրեսցուք մեք 'ի
քէն՝ արասցես մեզ ։ * Եւ նա ասէ 36
ցնոսա ։ զի՞նչ կամիք յինէն՝ զի արա-
րից ձեզ ։ * Եւ նոքա ասեն ցնա. տո՛ւր 37
մեզ՝ զի նստցուք մի յաջմէ քումմէ, և
մի յահեկէ 'ի փառսն քում ։ * Պատաս 38
խանի ետ Յս և ասէ ցնս ։ ոչ գիտէք
զինչ խնդրէք ։ կարէ՞ք ըմպել զբա-
ժակն՝ զոր ես ըմպելոց եմ, կամ զմկր
տութիւն մկրտիլ՝ զոր ես մկրտելոց եմ ։
* Եւ նոքա ասեն ցնա՝ կարեմք ։ և Յս 39
ասէ ցնս ։ զբաժակն՝ զոր ես ըմպելոց
եմ, ըմպիցէք. և զմկրտութիւն՝ զոր ես
մկրտելոց եմ, մկրտիցիք ։ * Բայց նստու- 40
ցանել ընդ աջմէ իմմէ և ընդ ահեկէ՝
ոչ է իմ տալ. այլ որոց պատրաստեալ
իցէ ։ * Եւ լուեալ վայն տասանցն՝ 41
սկսան բարկանալ յակոբայ և յովհան-
նու ։ * Եւ Յս կոչեաց զնոսա առ ինքն, 42
և ասէ ցնոսա ։ [գի]տէք, զի որք յա-
նուանն իշխանքն են հեթանոսաց՝ տի-
րեն նց ։ և մեծամեծք նց իշխեն նց ։
* Ոչ նոյնպէս իցէ և 'ի ձերում միջի ։ 43
այլ որ կամիցի 'ի ձէնջ մեծ լինել՝ եղի
ցի ձեր պաշտօնեայ ։ * Եւ որ կամիցի 44
'ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ամենե-
ցուն ծառայ ։ * Զի և որդի մար 45
դոյ՝ ոչ եկն առնուլ պաշտօն՝ այլ պաշ
տել. և տալ զանձն իւր փրկանս փո-
խանակ բազմաց ։ * Եւ գան յերի- 46
քով. և ընդ ելանելն նր յերիքովէ ա-
շակերտօքն և բազում ժողովրդով,
որդի տիմեի բարտիմէոս կոյր՝ նստէր
մուրացիկ յանցս ճանապարհի ։
* Իբրև լուաւ թէ Յս նազովրեցի է՝ 47
սկսաւ աղաղակել և ասել. որդի՛ դաւ
թի Յս, ողորմեա՛ ինձ ։ * Եւ սաս- 48
տէին նմա բազումք՝ զի լռեսցէ ։ և նա
առաւել ևս աղաղակէր. որդի՛ դաւ-
թի, ողորմեա՛ ինձ ։ * Զտեղի էառ 49
Յս, և հրամայեաց կոչել զնա. կոչեն
զկոյրն՝ և ասեն ցնա ։ քաջալերեա՛
արի, կոչէ զքեզ ։ * Եւ նր ընկեցեալ 50
զձորձս իւր, յարեաւ և եկն առ Յս ։
* Պատասխանի ետ նմա Յս, և ասէ. 51
զի՞նչ կամիս՝ թէ արարից քեզ ։ ասէ
ցնա կոյրն. ռաբբունի, զի բացայց ։
* Եւ Յս ասէ ցնա ։ երթ՝ հաւատք 52
քո կեցուցին զքեզ ։ և վաղվաղակի
բացաւ ։ և երթայր զհետ նորա 'ի ճա
նապարհին ։

Մատթ. 20. 20. — Ղուկ. 22. 25. — Ի Կ — Մատթ. 20. 29. — Ղուկ. 18. 35.

## ԳԼ: ԺԱ.

1 Եւ յորժամ մերձ եղեն յէմ,'ի բեթփագէ և 'ի բեթանիայ մօտ 'ի լեառն ձիթենեաց, առաքէ երկուս
2 յաշակերտաց անտի ։ * Եւ ասէ ցնս ։ երթա՛յք դուք 'ի գեօղդ՝ որ ընդդէմ ձեր կայ ։ և նոյնժամայն իբրև մտա-նէք 'ի նա, գտանիցէք յաւանակ մի կապեալ. յորոյ վերայ ոչոք 'ի մարդ-կանէ նստաւ ։ լուծէք զնա՝ և ածէք ։
3 * Եւ եթէ ոք ասասցէ ցձեզ՝ եթէ զի՞ լուծանէք զյաւանակդ, ասասջիք ե-թէ Տն իւրում պիտոյ է. և վաղվա-
4 ղակի առաքեսցէ զնա այսր ։ * Չոքան, և գտին զյաւանակն կապեալ առ-դուրս արտաքոյ 'ի փողոցի անդ, և լու-
5 ծին զնա ։ * Եւ ոմանք յորոց անդն կային՝ ասեն ցնս. զի՞ գործէք, զի՞ լու-
6 ծանէք զյաւանակդ ։ * Եւ նք ասեն ցնս՝ որպէս ասաց Յս. և թոյլ ետուն նց ։

Մատթ. 21. 1. — Ղուկ. 19. 29.



7 * Ածին զյաւանակն առ Յս ։ և ար-կանէին 'ի վր նր հանդերձս. և նստաւ
8 'ի վր նր ։ * Եւ բազումք զհանդերձս իւրեանց տարածանէին 'ի վերայ ճա-նապարհին ։ և այլք ոստս 'ի ծառոց հատանէին՝ և արկանէին զճանապար
9 հաւն ։ * Եւ որք առաջի և զկնի եր-թային, աղաղակէին, և ասէին ։ ովսան
10 նայ բարձրելոյն ։ * Օրհնեալ որ գայ յանուն Տն. օրհնեալ թագաւորու-թիւն հօր մերում դաւթի ։ խաղաղու-թի

զհան- դերձս իւրեանց — Յհն. 12. 14. — Սաղմ. 117. 26. — Մատթ. 21. 9.

թն յերկինս՝ և փառք ՚ի բարձունս։

11 *Եւ եմուտ Յս յԵմ ՚ի տաճարն։ և հայեցաւ շուրջ զամենեքումբք։ և զի էր երեկոյացեալ ժամն. ել ՚ի Բեթանիա երկոտասանիւքն հանդերձ։

ԻԲ

12 *Եւ ՚ի վաղիւն անդր մինչդեռ ելանէին ՚ի Բեթանիայ՝ քաղցեաւ։ 13 *Եւ ետես զթզենի մի ՚ի բացուստ տերևալից. և եկն թէ գտանիցէ ինչ ՚ինմա։ և իբրև եկն ՚ինա՝ ոչինչ եգիտ, բայց միայն տերև. զի ոչ էր իսկ ժամանակ թզոյ։ 14 *Պատասխանի ետ և ասէ ցնա։ մի ևս ոք յաւիտեան ՚ի քէն պտուղ կերիցէ։ և լսէին աշակերտքն նորա։ 15 *Գան յԵմ։ և մտեալ ՚ի տաճարն՝ սկսաւ հանել զվաճառականսն և զգնողս՝ որք էին ՚ի տաճարին. և զսեղանս հատավաճառացն ցրուեաց։ և զաթոռս աղաւնեվաճառացն կործանեաց։ 16 *Եւ ոչ թողոյր եթէ ոք անօթ ինչ անցուցանիցէ ընդ տաճարն։ 17 *Ուսուցանէր և ասէր ցնս։ թէ գրեալ է։ Տուն իմ տուն աղօթից կոչեսցի ամ հեթանոսաց։ և դուք արարիք զդա այրս աւազակաց։ 18 *Լուան քահանայապետքն և դպիրք. և խնդրէին թէ ոպ կորուսցեն զնա։ բայց երկնչէին ՚ինմանէ։ զի ամ ժողովուրդն զարմացեալ էր ընդ ուսումն նորա։ 19 *Եւ իբրև երեկոյ լինէր՝ արտաքոյ քան զքաղաքն ելանէին։ 20 *Եւ մինչ դեռ այգուցն առ նովաւ անցանէին, տեսին զթզենին ցամաքեալ յարմատոյ։ 21 *Եւ յիշեաց պետրոս՝ և ասէ ցնա։ ռաբբի՝ ահաւասիկ թզենին՝ զոր անիծեր՝ ցամաքեցաւ։ 22 *Պատասխանի ետ Յս և ասէ ցնս։ եթէ ունիցիք զհաւատսն Այ։ 23 *Ամէն ասեմ ձեզ. որոք ասիցէ լերինս այսմիկ՝ բարձիր, և անկիր ՚ի ծով. և ոչ երկմտիցի ՚ի սրտի իւրում, այլ հաւատայցէ՝ թէ զոր ասէն լինի, եղիցի նմա զորինչ և ասիցէ։ 24 *Վասն այսորիկ ասեմ ձեզ՝ զամ ինչ վն որոյ աղօթս արարեալ խնդրիցէք և հաւատայցէք թէ առնուցուք, եղիցի ձեզ։ 25 *Եւ յորժամ յաղօթս կայցէք, թողուցուք, եթէ ունիցիք ինչ զումեքէ։ զի և հայրն ձեր՝ որ յերկինս է, թողցէ ձեզ զյանցանս ձեր։ 26 *Ապա եթէ դուք ոչ թողուցուք, և ոչ հայրն ձեր որ յերկինս է՝ թողցէ ձեզ զյանցանս ձեր։

ԻԳ

27 *Գան միւսանգամ յԵմ. և մինչդեռ ՚ի տաճարի անդ զգնայր, գան առ նա քահանայապետքն և դպիրք և ծերք։ 28 *Եւ ասեն ցնա։ որով իշխանութբ առնես զայդ. և ով ետ քեզ զիշխանութիւն զայդ։ 29 *Պատասխանի ետ Յս և ասէ ցնոսա. հարցից և ես զձեզ բան մի՝ տուք ինձ պատասխանի. և ես ասացից ձեզ՝ որով իշխանութբ առնեմ զայս։ 30 *Մկրտութիւն յոհաննու յերկնից էր, եթէ ՚ի մարդկանէ։ տուք ինձ պատասխանի։ 31 *Խորհէին ընդ միմեանս և ասէին. եթէ ասեմք, եթէ յերկնից, ասէ ցմեզ՝ իսկ ընդէ՞ր ոչ հաւատացիք նմա։ 32 *Այլ եթէ ասեմք ՚ի մարդկանէ, երկնչիմք ՚ի ժողովրդենէն։ զի ամենեքին գիտէին զյոհաննէս, թէ մարգարէ էր։ 33 *Պատասխանի ետուն և ասեն ցնա՝ չգիտեմք։ և Յս ետ նց պատասխանի և ասէ։ և ոչ ես ասեմ ձեզ, որով իշխանութբ առնեմ զայս։

## ԳԼ: ԺԲ:

1 Եւ սկսաւ խօսել ընդ նոսա առակօք և ասել. այր մի տնկեաց այգի. և եած շուրջ զնովաւ ցանկ. և փորեաց հնձան. և շինեաց աշտարակ. և ետ զնա ցմշակս. և գնաց ՚ի տար աշխարհ։ 2 *Եւ առաքեաց առ մշակսն ՚ի ժամանակի ծառայ մի, զի ՚ի մշակաց անտի առցէ ՚ի պտղոյ այգւոյն։ 3 *Եւ նոցա կալեալ զան հարին զնա՝ և արձակեցին ունայն։ 4 *Դարձեալ առաքեաց առ նոսա այլ ծառայ. և զնա կառափնատեցին՝ և արձակեցին անարգեալ։ 5 *Եւ դարձեալ այլ առաքեաց. և զնա սպանին։ և զբազումս այլս. զոմանս հարկանէին. և զոմանս սպանանէին։ 6 *Ապա որդի մի էր սիրելի, զնա առաքեաց առ նոսա յետոյ. և ասէ, թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։ 7 *Իսկ մշակքն իբրև տեսին զնա թէ գայ, ասեն ցմիմեանս՝ սա է ժառանգն. եկայք սպանցուք զսա. և մեր լիցի ժառանգութիւն։ 8 *Եւ կալեալ զնա՝ սպանին՝ և հանին արտաքոյ այգւոյն։ 9 *Արդ՝ զինչ արասցէ Տր այգւոյն. եկեսցէ և կորուսցէ զմշակսն. և տացէ զայգին ՚ի ձեռս այլոց։ 10 *Եւ ոչ զգիրն զայն ընթերցեալ իցէ ձեր. թէ զվէմն, զոր անարգեցին շինօղքն, նա եղև գլուխ անկեան։ 11 *՚Ի Տէ եղև այս. և է սքանչելի յաչս մեր։ 12 *Եւ խնդրէին զնա ունել. և երկեան ՚ի ժողովրդենէ անտի. զի գիտացին թէ առ նս ասաց զառակն. և թողին զնա՝ և գնացին։ 13 *Եւ առաքեն առ նա զոմանս ՚ի փարիսեցւոց անտի՝ և ՚ի հերովդիանոսաց. զի զնա որսասցեն բանիւ. և նոքա եկեալ հարցանէին զնա նենգութբ և ասէին։ 14 *Վարդապետ, գիտեմք զի ճշմարիտ ես. և ոչինչ փոյթ է քեզ զումեքէ. զի ոչ հայիս յերեսս մարդկան.

այլ

Ղուկ. 19. 38. Մատթ. 21. 10. Մատթ. 21. 19. Եսայ. 56. 7. Երեմ. 7. 11. Մատթ. 21. 21. Մատթ. 7. 7. 21. 22. Մատթ. 6. 14. 18. 35. Ղուկ. 11. 9. Ղուկ. 20. 1. Եսայ. 5. 1. Երեմ. 2. 21. Մատթ. 21. 33. Ղուկ. 20. 9. Սաղմ. 117. 22. Եսայ. 28. 16. Մատթ. 21. 42. Գործ. 4. 11. Հռոմ. 9. 33. 1. Պետ. 2. 7. Մատթ. 22. 15. Ղուկ. 20. 20.

այլ ճշմարտութեամբ զճանապարհն Այ ուսուցանես. արդ՝ ասա՛ մեզ՝ արժա՞ն է հարկս տալ կայսեր, թէ ո՛չ. տացո՞ւք, եթէ ոչ տացուք ։ 15 *Եւ Յս գիտաց զկեղծաւորութիւն նոցա՝ ասէ ցնոսա. զի՛ փորձէք զիս կեղծաւորք. բերէ՛ք ինձ դահեկան մի՝ զի տեսից ։
16 *Եւ նոքա բերին ։ Եւ ասէ ցնոսա. ո՞յր է պատկերս այս, կամ գիր ։ Եւ նոքա ասեն ցնա՝ կայսեր ։

Ի.Գ.

17 *Պատասխանի ետ Յս, և ասէ ցնս. Երթա՛յք, տո՛ւք զկայսերն կայսեր. և զԱյն, Այ ։ և զարմացան ընդ նա ։
18 *Գան առ նա սադուկեցիքն, որք ասեն՝ թէ չիք յարութիւն. հարցանէին ցնա և ասէին ։ 19 *Վարդապետ, մովսէս գրեաց մեզ ։ եթէ՝ ուրուք եղբայր մեռանիցի և թողուցու կին. և զորդի ոչ թողուցու, առցէ եղբայր նր զկին նր. և յարուսցէ զաւակ եղբօր իւրում ։
20 *Արդ՝ եղբարք եօթն էին առ մեզ. առաջինն էառ կին՝ և մեռաւ. և ոչ եթող զաւակ ։ 21 *Եւ երկրորդն էառ զնոյն, և մեռաւ. և ոչ նա եթող զաւակ. նոյնպէս և երրորդն էառ զնոյն ։
22 *Եւ եօթանեքեան իսկ. և ոչ թողին զաւակ. յետ ամենեցուն մեռաւ և կինն ։ 23 *Արդ՝ 'ի յարութեան, յորժամ յառնիցեն, ո՞յր 'ի նոցանէ լինիցի կինն՝ զի եօթանեքեան կալան զնա կին ։
24 *Պատասխանի ետ Յս և ասէ ցնոսա. ո՞չ վասն այդորիկ իսկ մոլորեալ էք. զի ո՛չ գիտէք զգիրս՝ և ո՛չ զզօրութիւն Այ ։ 25 *Զի յորժամ 'ի մեռելոց յարիցեն, ո՛չ արք կանայս առնեն, և ո՛չ կանայք արանց լինին. այլ իբրև զհրեշտակս իցեն՝ որք յերկինս են ։ 26 *Այլ վասն յարութեան մեռելոց զի յառնեն, ո՞չ իցէ ընթերցեալ ձեր 'ի գիրսն մովսէսի 'ի մորենւոջն. որպէս ասաց ցնա Այ. Ես եմ, ասէ՝ Այ աբրահամու. Այ իսահակայ ։ և Այ յակոբայ ։ 27 *Եւ ո՛չ է Այ մեռելոց՝ այլ կենդանեաց. և արդ՝ դուք յոյժ մոլորեալ էք ։
28 *Եւ մատուցեալ միոյն 'ի դպրացն՝ լսէր նոցա մինչ վիճէին. իբրև ետես եթէ բարւոք ետ նց զպատասխանին, եհարց ցնա և ասէ. ո՞ր պատուիրան է առաջին ։ 29 *Եւ Յս ասէ ցնա. առաջին քան զամենայն. Լո՛ւր իսրայէլ, Տր Այ մեր՝ Տր մի է ։ 30 *Եւ սիրեսցես զՏր Այ քո յամ՝ սրտէ քումմէ՝ և յամ անձնէ քումմէ. † և յամենայն զօրութենէ քումմէ. այս է առաջին պատուիրան ։
31 *Եւ երկրորդ նման սմին. սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո. մեծ քան զսոսա այլ պատուիրան ո՛չ գոյ ։
32 *Եւ ասէ ցնա դպիրն, բարւոք է վա՛րդապետ. ճշմարտութեամբ ասացեր՝ թէ մի է Այ և ո՛չ գոյ այլ՝ բաց 'ի նմանէ ։
33 *Եւ սիրել զնա յամենայն սրտէ՝ † և յամ զօրութենէ՝ և յամ մտաց. և սիրել զընկերն իբրև զանձն, առաւել է քան զողջակէզս և զզոհս ։
34 *Եւ տեսեալ Յի թէ իմաստութբ ետ զպատասխանին, ասէ ցնա. չես հեռի յարքայութենէ Այ. և ո՛չ և ոք իշխէր ինչ հարցանել ցնա ։

Ի.Ե.

35 *Պատասխանի ետ Յս և ասէ, մինչ ուսուցանէր 'ի տաճարին, զիա՞րդ ասեն դպիրքն, եթէ Քս որդի դաւթի է ։
36 *Եւ ինքն դաւիթ հոգւովն սրբով ասէ. ասաց Տր ցՏր իմ, նի՛ստ ընդ աջմէ իմմէ, մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ 37 *Արդ՝ եթէ ինքն իսկ դաւիթ զնա Տր կոչէ, զիա՞րդ իցէ որդի նորա ։ և բազում ժողովուրդ լսէր նմա քաղցրութբ ։
38 *Եւ ասէր ուսուցանելով 'ի վարդապետութեան իւրում. զգո՛յշ լերուք 'ի դպրաց անտի. որք կամին 'ի հանդերձս երևելիս շրջիլ. զնախողջոյնս խնդրել 'ի հրապարակս ։ 39 *Եւ զնախաթոռս 'ի ժողովուրդս. և զգահագլուխս յընթրիս ։ 40 *Որք ուտեն զտունս այրեաց. պատճառանօք յերկարեն զաղօթս. զի աւելի ևս դատաստանս ընկալցին ։
41 *Կայր Յս ընդդէմ գանձանակին. տեսանէր թէ զիարդ ժողովուրդն արկանէր պղինձ 'ի գանձանակն. և բազում մեծատունք արկին բազում ինչ ։
42 *Եկն այրի մի, և էարկ երկուս լումայս. որ է նաքարակիտ մի ։ 43 *Եւ կոչեալ առ ինքն զաշակերտսն, ասէ ցնս. ամէն ասեմ ձեզ. զի այրին այն տառապեալ՝ շատ էարկ քան զամենեսեան 'ի գանձանակն ։
44 *Քանզի ամենեքին յաւելորդաց իւրեանց արկին. այլ նա 'ի չքաւորութենէ իւրմէ՝ զամենայն ինչ զոր ունէր՝ էարկ գոյին չափ ըզ կեանս իւր ։

## ԳԼ ։ ԺԳ ։

Ի.Զ.

1 Եւ յելանելն նորա 'ի տաճարէ անտի, ասէ ցնա մի յաշակերտացն նորա. վարդապետ. տե՛ս՝ որպիսի՛ք են քարինքս և որպիսի՛ք շինուածք ։
2 *Պատասխանի ետ նմա Յս և ասէ. տեսանես զայդ ամենայն շինուած. ամէն ասեմ ձեզ՝ եթէ ո՛չ թողցի քար 'ի քարի վերայ՝ որ ո՛չ քակտեսցի ։
3 *Եւ մինչ նստէր նա 'ի լերինն ձիթենեաց յանդիման տաճարին, հարցանէին ցնա առանձինն, պետրոս՝ և յակոբոս՝ և յօհաննէս՝ և անդրէաս ։
4 *Ասա՛ մեզ, երբ լինիցի այդ. և զի՞նչ նշան է՝ յորժամ կատարելոց իցէ այդ ամե-

Հռովմ. 13.7. Մատթ. 22.23. Ղուկ. 20.27. Բ. Օրէ. 25.5. Ելից 3.6. Մատթ. 22.32. Մատթ. 22.35. Բ. Օրէ. 6.4. † Ի յոյն. Ղևտ. 19.18. Մատթ. 22.39.

Հռովմ. 13.9. † Ի յոյն. Գաղա. 5.14. Յակ. 2.8. Սաղմ. 109.1. Մատթ. 22.44. Ղուկ. 20.42. Մատթ. 23.5. Ղուկ. 11.43. և 20.46. Մատթ. 23.14. Ղուկ. 21.1. Մատթ. 24.1. Ղուկ. 19.44. և 21.6.

ամենայն։ 5 *Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. Զգոյշ կացէք. մի ոք զձեզ խաբեսցէ։ 6 *Զի բազումք եկեսցեն յանուն իմ. և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոս. և զբազումս մոլորեցուսցեն։

7 *Եւ յորժամ լսիցէք պատերազմունս, և համբաւս պատերազմաց, մի խռովիցիք. զի պարտ է լինել. բայց չև է կատարած։ 8 *Զի յարիցէ ազգ յազգի վերայ. և թագաւորութիւն ՚ի թագաւորութեան վերայ. և եղիցին շարժմունք ՚ի տեղիս տեղիս, սովք՝ և սրածութիւնք՝ և խռովութիւնք. այլ այն ամենայն՝ սկիզբն է երկանց։

9 *Եւ զձեզ իսկ մատնեսցեն յատեանս՝ և ՚ի ժողովուրդս տանջիցիք. և առաջի դատաւորաց և թագաւորաց կայցէք վասն իմ ՚ի վկայութիւն նոցա։

10 *Եւ ամենայն հեթանոսաց. բայց նախ պարտ է աւետարանիս քարոզել։

11 *Եւ յորժամ տանիցին զձեզ մատնել, մի յառաջագոյն հոգայցէք. և մի զմտաւ ածիցէք, թէ զինչ խօսիցիք. այլ որինչ տացի ձեզ ՚ի ժամուն յայնմիկ՝ զայն խօսիցիք. զի ոչ դուք էք որք խօսիցիքն՝ այլ Հոգին սուրբ։

12 *Մատնեսցէ եղբայր զեղբայր ՚ի մահ՝ և հայր զորդի. և յառնիցեն որդիք ՚ի վերայ հարց՝ և սպանանիցեն զնոսա։

13 *Եւ եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. այլ որ համբերեսցէ ի սպառ՝ նա կեցցէ։

14 *Եւ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածին. զի կայցէ ՚ի տեղւոջ, ուր չիցէ արժան. որ ընթեռնուն ՚ի միտ առցէ. յայնժամ որք ՚ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ՚ի լերինս։

15 *Եւ որ ՚ի վերայ տանեացն իցէ՝ մի իջցէ ՚ի տունն. և մի մտցէ բառնալ ինչ ՚ի տանէ իւրմէ։ 16 *Եւ որ յագարակին իցէ, մի դարձցի յետս առնուլ զձորձս իւր։ 17 *Բայց վայ իցէ յղեաց և ստնտուաց, յաւուրսն յայնոսիկ։

18 *Յաղօթս կացէք՝ զի մի ձմերայնի լինիցի։ 19 *Եղիցին աւուրքն այնոքիկ նեղութեանց՝ որպէս ոչ եղեն երբէք այնպիսիք ՚ի սկզբանէ արարածոց մինչև ցայժմ, և մի այլ լիցի։ 20 *Եւ եթէ ոչ էր կարճեալ Տէր զաւուրսն զայնոսիկ վասն ընտրելոց իւրոց՝ ոչ ապրէր ամենայն մարմին. այլ վասն ընտրելոցն՝ զորս ընտրեաց՝ կարճեաց զաւուրսն զայնոսիկ։

21 *Յայնժամ եթէ ոք ասիցէ ձեզ. եթէ ահաւասիկ է Քրիստոս, կամ աւանիկ, մի հաւատայցէք։ 22 *Զի յարիցեն սուտ քրիստոսք. և սուտ մարգարէք. և տացեն նշանս և արուեստս առ ՚ի մոլորեցուցանելոյ եթէ հնար ինչ իցէ և զընտրեալսն։ 23 *Բայց դուք զգոյշ եղերուք. ահաւասիկ յառաջագոյն ասացի ձեզ զամենայն։ 24 *Եւ յաւուրսն յայնոսիկ յետ նեղութեանն այնորիկ արեգակն խաւարեսցի. և լուսին ոչ տացէ զլոյս իւր։ 25 *Եւ աստեղք յերկնից թօթափեսցին. և զօրութիւնք յերկինս շարժեսցին։ 26 *Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ ամպովք՝ զօրութեամբ և փառօք բազմօք։

27 *Եւ յայնժամ առաքեսցէ զհրեշտակս իւր. և ժողովեսցէ զընտրեալս իւր ՚ի չորից հողմոց. ՚ի ծագաց երկրի մինչև ՚ի ծագս երկնից։

28 *Բայց դուք ՚ի թզենւոյ անտի ուսջիք զառակն, յորժամ ոստք նորա կակղանայցեն. և տերև արձակիցի ՚ի նմա գիտէք թէ մերձ է ամառն։

29 *Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ՝ գիտասջիք թէ մերձ է առ դուրս։

30 *Ամէն ասեմ ձեզ. թէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղիցի։

31 *Երկինք և երկիր անցցեն. և բանք 32 իմ ոչ անցանիցեն։ *Եւ վասն աւուրն այնորիկ և ժամու՝ ոչոք գիտէ. ոչ հրեշտակք յերկինս՝ և ոչ որդի. բայց 33 հայր միայն։ *Զգոյշ եղերուք. սկեցէք և կացէք յաղօթս. զի ոչ գիտէք երբ ժամանակն իցէ։

34 *Որպէս այր մի գնացեալ ՚ի տար աշխարհ՝ թողուցու զտունն իւր. և տացէ ծառայից իւրոց իշխանութիւն. և իւրաքանչիւր զգործս իւր. և դռնապանին պատուէր տայցէ, զի արթուն լինիցի։ 35 *Արդ՝ արթուն կացէք. (զի ոչ գիտէք երբ Տէր տանն գայցէ՝ յերեկորեայ՝ եթէ ՚ի մէջ գիշերի՝ եթէ ՚ի հաւախօսի՝ եթէ ընդ առաւօտս։) 36 *Գուցէ եկեալ յանկարծակի՝ գտանիցէ զձեզ ՚ի քուն։

37 *Բայց զոր ձեզդ ասեմ, ամենեցուն ասեմ, արթուն կացէք։

## ԳԼ. ԺԴ.

1 Եւ էր զատիկ և բաղարջակեր, յետ երկուց աւուրց. խնդրէին քահանայապետքն, և դպիրք՝ եթէ զիարդ զնա նենգութեամբ կալեալ սպանանիցեն։ 2 *Բայց ասէին, թէ մի ՚ի տօնի աստ. զի մի խռովութիւն լինիցի ՚ի ժողովրդեանն։ 3 *Եւ մինչ էր ՚ի Բեթանիա ՚ի տան Սիմօնի բորոտի բազմեալ, եկն կին մի, որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ. և բեկեալ զշիշն՝ եհեղ ՚ի վերայ գլխոյ նորա։ 4 *Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ՞ր եղև կորուստ իւղոյդ այդորիկ։

*Մարթ



5 *Մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան զերեքհարիւր դահեկանի. և տալ աղքատաց ։ և զայրանային նմա յոյժ ։ 6 *Եւ ՅՍ ասէ ցնոսա ։ Թո՛յլ տուք դմա ։ զի՞ աշխատ առնէք ։ զի գործ մի բարի գործեաց դա յիս ։ 7 *Յա̃մ ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք ։ և յորժամ կամիք՝ կարող էք առնել նց բարիս. այլ զիս ոչ յա̃մ ժամ ընդ ձեզ ունիք ։ 8 *Դա զոր ունէր, արար ։ յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ՚ի նշան պատանաց ։ 9 *Ամէն ասեմ ձեզ. ուրեք քարոզեսցի աւետարանս այս ընդ ա̃մ աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի ՚ի յիշատակի դորա ։

10 *‖Եւ յուդա իսկարիովտացի մի յերկոտասանից անտի, գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա նոցա ։

‖ Մատ. 26.14.

11 *Նոքա իբրև լուա՛ն՝ խնդացին ։ և խոստացան տալ նմա արծաթ ։ և խնդրէր թէ զիա՞րդ պարապով մատնեսցէ զնա ։ 12 *‖Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն. յորում զպասեքն զենուին. ասեն ցնա աշակերտքն ։ ո՞ւր կամիս՝ երթիցուք՝ պատրաստեսցուք՝ զի կերիցես զզատիկն ։ 13 *Եւ առաքէ երկուս յաշակերտաց անտի՝ և ասէ ցնոսա ։ երթա՛յք ՚ի քաղաք ։ և իբրև մտանիցէք ՚ի քաղաքն՝ պատահեսցի ձեզ այր մի, որ սափոր ջրոյ յուսն ունիցի ։ երթա՛յք զհետ նր ։ 14 *Եւ յոր տուն մտանիցէ, ասասջիք ցտանու-

‖ Մատ. 26.17. Ղուկ. 22. 7.



տեառն. վարդապետն ասէ ո՞ւր են իջեվանքն իմ, ուր աշակերտօքս ուտիցեմ զզատիկն ։ 15 *Եւ նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ. անդ պատրաստեսջիք մեզ ։ 16 *Եւ գնացին պատրաստել աշակերտքն նորա ։ եկին ՚ի քաղաքն՝ և գտին որպէս ասացն նց ։ և պատրաստեցին զզատիկն ։ 17 *‖Եւ իբրև երեկոյ եղև՝ գայ երկոտասանիւքն հանդերձ ։ 18 *Եւ իբրև բազմեցան, և դեռ ուտէին, ասէ ՅՍ ։ ամէն ասեմ ձեզ՝ ‖զի մի ոմն ՚ի ձէնջ մատնելոց է զիս ։ որ ուտէ իսկ ընդ իս ։ 19 *Եւ նոքա սկսան տրտմիլ՝ և ասել մի ըստ միոջէ՝ միթէ ե՞ս իցեմ. և միւսն, միթէ ե՞ս իցեմ ։

20 *Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա ։ մի յերկոտասանից այտի, որ մխեաց ընդ իս ՚ի սկաւառակդ ։ 21 *Այլ որդի մարդոյ երթայ՝ ‖որպէս գրեալ է վ̃ նր ։ բայց վա՜յ իցէ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն որդի մարդոյ մատնեսցի ։ լաւ էր նմա՝ թէ չէր իսկ ծնեալ մարդն այն ։

22 *‖Եւ մինչդեռ ուտէին, առեալ ՅՍ հաց. օրհնեաց և եբեկ՝ ետ նոցա, և ասէ. առէք՝ այդ է մարմին իմ ։

23 *Եւ առեալ բաժակ՝ գոհացաւ և ետ նց. և արբին ՚ի նմանէ ամենեքեան ։

24 *Եւ ասէ ցնս ։ այս է արիւն իմ նորոյ ուխտի. որ փոխանակ բազմաց հեղանի ։

25 *Ամէն ասեմ ձեզ. թէ ո՛չ ևս յաւելից ըմպել ՚ի բերոյ որթոյ մինչև յօրն յայն յորժամ արբից զնա նոր յարքայութեան ԱՅ ։ 26 *Եւ գոհացեալ ելին ՚ի լեառն 27 ձիթենեաց ։ *Եւ ասէ ցնս ՅՍ. ‖ամենեքեան գայթագղելոց էք յինէն յայսմ գիշերի. զի գրեալ է, թէ ‖հարից զհովիւն, և ոչխարքն ցրուեսցին ։

28 *Այլ յետ յարութեան իմոյ յառաջագոյն երթայց քան զձեզ ՚ի գալիլեա ։

29 *Պատասխանի ետ պետրոս և ասէ ցնա ։ թէպէտ և ամենեքին գայթագ30ղեսցին, այլ ես ոչ ։ *Եւ ասէ ցնա ՅՍ. ամէն ասեմ քեզ. թէ դու իսկ յայսմ գիշերի մինչև հաւու խօսեալ իցէ՝ 31 երիցս ուրասցիս զիս ։ *Իսկ պետրոս առաւել ևս պնդէր և ասէր ։ եթէ մեռանիլ ևս հասանիցի ընդ քեզ, զքեզ ոչ ուրացայց ։ նոյնպէս և ամենեքեան 32 ասէին ։ *‖Գան ՚ի գեօղն՝ որում անուն էր գեթսեմանի ։ և ասէ ցաշակերտսն ։ նստարո՛ւք աստ՝ մինչ ես յա33ղօթս կացից ։ *Եւ առնու ընդ իւր զպետրոս՝ և զյակոբոս՝ և զյոհաննէս. և սկսաւ տրտմիլ և հոգալ ։

34 *Յայնժամ ասէ ցնոսա ։ տրտում է անձն իմ մինչև ՚ի մահ. մնացէք աստ 35 և արթուն կացէք. *Եւ մատուցեալ սակաւիկ մի յառաջ, անկաւ ՚ի վերայ

‖ Մատ. 26. 20.
Ղուկ. 22. 14.
‖ Յովհ. 13.21.
‖ Սաղ. 40. 10.
Գործ. 1.16.
‖ Մատ. 26.26.
1. Կոր. 11. 24.
‖ Յովհան. 16. 32.
‖ Զաք. 13.7.
խօսեալ իցէ երկիցս՝ երիցս ուրասցիս
‖ Մատ. 26. 36.
Ղուկ. 22. 40.

երեսաց իւրոց յերկիր․ և կայր յաղօթս․ զի եթէ հնար ինչ է՝ անցցէ ՛ի նմանէ ժամն։ 36 * Եւ ասէ. աբբայ հայր․ ամ՛ ինչ քեզ հնարաւոր է․ անցո՛ զբաժակս զայս յինէն. բայց ո՛չ որպէս ես կամիմ՝ այլ որպէս դու կամիս։

37 * Եւ գայ՝ գտանէ զնոսա՝ զի ննջէին. և ասէ ցպետրոս. սիմօն ննջես. ո՞չ կարացեր ժամ մի արթուն կալ։

38 * Արթուն կացէք՝ և յաղօթս կացէք. զի մի՛ մտջիք ՛ի փորձութի. ոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար։ 39 * Եւ դարձեալ չոքաւ՝ եկաց յաղօթս․ և զնոյն բան ասաց։ 40 * Դարձաւ միւսանգամ անդրէն. և եգիտ զնոսա ՛ի քուն. քանզի էին աչք նոցա ծանրացեալք. և ո՛չ գիտէին զինչ պատասխանի տայցեն նմա։ 41 * Գայ երրորդ անգամ, և ասէ ցնոսա. ննջեցէք այսուհետև, և հանգերուք. զի հասեալ է վախճան․ եկն ժամ. և ահա որդի մարդոյ մատնի ՛ի ձեռս մեղաւորաց։ 42 * Յարիք, գնասցուք․ զի ահաւասիկ մերձեցաւ՝ որ մատնելոց է զիս։ 43 * Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ գայ յուդա իսկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի․ ‖ և ընդ նմա ամբոխ սուսերօք և բրօք․ ՛ի քահանայապետից՝ և ՛ի դպրաց՝ և ՛ի ծերոց։ [‖ Մատթ. 26. 47. Ղուկ. 22. 47. Յովհ. 18. 3.] 44 * Տուեալ էր նշան մատնչին՝ և ասէր․ ընդ որում ես համբուրեցից՝ նա է․ կալջիք զնա՝ և տարջիք զգուշութբ։ 45 * Եւ մատուցեալ վաղվաղակի՝ ասէ ցնա. ռաբբի, ռաբբի․ և համբուրեաց զնա։ 46 * Եւ նոքա արկին ՛ի նա ձեռս՝ և կալան զնա։

47 * Եւ միոմն յայնցանէ՝ որք զնովաւն կային՝ ձգեաց զսուր․ և եհար զծառայ քահանայապետին. և ՛ի բաց եհան զունկն նր։ 48 * Պատասխանի ետ Յս և ասէ ցնոսա. իբրև ՛ի վերայ աւազակի ելիք սուսերօք և բրօք ունիլ զիս։

49 * Հանապազ առ ձեզ էի՝ և ուսուցանէի ՛ի տաճարին․ և ո՛չ կալայք զիս. այլ զի լցցին գիրք մարգարէից։ 50 * ‖ Յայնժամ թողին զնա աշակերտքն ամենեքին՝ և փախեան։ [‖ Մատթ. 26. 56.] 51 * Եւ ոմն երիտասարդ զհետ երթայր նր՝ արկեալ զիւրև զկտաւ մի ՛ի մերկոյ․ ունէին զնա երիտասարդքն։ 52 * Եւ նր թողեալ զկտաւն՝ փախեաւ մերկ ՛ի նոցանէ։

53 * ‖ Եւ տարան զՅս առ քահանայապետն կայիափայ. և գային ընդ նմա ամ քահանայքն՝ և դպիրք և ծերք։ [‖ Մատթ. 26. 57. Ղուկ. 22. 54. Յովհ. 18. 13.] 54 * Եւ պետրոս երթայր զհետ նր մինչև ՛ի ներքս իսկ ՛ի գաւիթ քահանայապետին. և նստէր ընդ սպասաւորսն․ և ջեռնոյր առ լուսոյն։ 55 * ‖ Իսկ քահանայապետքն՝ և ամ ատեանն խնդրէին [‖ Մատթ. 26. 59.] հակառակ Յի վկայութի ինչ. զի հարախօսեսցեն զնա․ և ո՛չ գտանէին։

56 * Զի բազումք սուտ վկայութի վկայէին զնմանէ․ և նման միմեանց ո՛չ էին վկայութիքն։ 57 * Ոմանք յարուցեալ վկայէին սուտ զնմանէ, և ասէին․

58 * Թէ մեք լուաք ՛ի դմանէ զի ասէր․ ‖ Ես քակեցից զտաճարդ զայդ ձեռագործ․ և զերիս աւուրս շինեցից զայլ առանց ձեռագործի։ [‖ Յովհ. 2. 19.] 59 * Սակայն և այնպէս չէր նման վկայութի նոցա։

60 * Ապա յարուցեալ քահանայապետն ՛ի մէջ՝ հարցանէր զՅս, և ասէր. ո՛չինչ տաս պատասխանի. զի՞նչ դոքա զքէն վկայեն։ 61 * Եւ Յս լուռ եւեթ կայր, և ո՛չ տայր ինչ պատասխանի․ դարձեալ քահանայապետն հարցանէր ցնա կրկին անգամ և ասէր. դո՞ւ ես Քս որդի Այ օրհնելոյն։ 62 * Պատասխանի ետ Յս և ասէ ցնա. դու ասացեր՝ թէ ես եմ. ‖ բայց տեսանիցէք զորդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեն Այ․ և եկեալ ընդ ամպս երկնից։ [‖ Մատթ. 24. 30. և 26. 64.]

63 * Եւ քահանայապետն պատառեաց վաղվաղակի զպատմուճան իւր և ասէ․ 64 զի՞նչ ևս պիտոյ են մեզ վկայք. * Ահա լուայք ամենեքեան զհայհոյութի ՛ի բերանոյ դորա․ զիա՞րդ թուի ձեզ․ և ամենեքեան դատապարտեցին զնա՝ թէ մահապարտ է։ 65 * Եւ ոմանք սկսան թքանել ընդ երեսս նր․ ձորձ զգլխով արկանել՝ կոփել և ասել․ մարգարեա՛ց մեզ Քսդ․ ո՞վ է այն՝ որ եհարն զքեզ․ և սպասաւորքն ապտակս հանէին նմա։

66 * ‖ Եւ պետրոս մինչդեռ էր ՛ի խոնարհ ՛ի գաւթին, գայ աղախին մի քահանայապետին։ [‖ Մատթ. 26. 69. Ղուկ. 22. 56. Յովհ. 18. 17.] 67 * Եւ տեսանէ զնա՝ զի ջեռնոյր․ հայեցաւ ընդ նա և ասէ․ և դու ընդ Յի նազովրեցւոյ էիր։

68 * Նա ուրացաւ և ասէ․ ո՛չ ճանաչեմ․ և ո՛չ գիտեմ զինչ դուդ ասես․ և ելեալ արտաքին գաւիթն, և հաւ խօսեցաւ։ 69 * ‖ Դարձեալ ետես զնա աղախինն․ և սկսաւ ասել ցայնոսիկ՝ որք շուրջն կային, թէ և սա ՛ի նոցանէ է։ [‖ Մատթ. 26. 71.]

70 * Եւ նա դարձեալ ուրացաւ։ ‖ և յետ սակաւ միոյ՝ դարձեալ որք շուրջն կային, ասեն ցպետրոս․ արդարև և դու ՛ի նոցանէ ես․ քանզի գալիլեացի ես՝ և խօսքդ իսկ քո նման են։ [‖ Ղուկ. 22. 59. Յովհ. 18. 25.]

71 * Եւ սկսաւ նզովել՝ երդնուլ և ասել թէ ո՛չ գիտեմ զորմէ դուքդ ասէք․

72 * Եւ նոյնժամայն կրկին հաւ խօսեցաւ․ ‖ և յիշեաց պետրոս զբանն՝ զոր ասաց ցնա Յս, թէ չև իցէ հաւու երկիցս խօսեալ․ զի դու երիցս ուրասցիս զիս․ և սկսաւ լալ։ [‖ Մատթ. 26. 75. Յովհ. 13. 38.]

## ԳԼ. ԺԵ.

(Մատթ. 27.1. Ղուկ. 22.66. Յովհ. 18.28.)

Եւ վաղվաղակի ընդ առաւօտն , խորհուրդ արարեալ քահանայապետիցն հանդերձ ծերօքն և դպրօք, և ամենայն ատեանն . կապեցին զՅս և տարան մատնեցին պիղատոսի ։ 1

* Եհարց զնա պիղատոս և ասէ . դո՞ւ ես թագաւորն հրէից ։ Նա պատասխանի ետ նմա և ասէ՝ դու ասես ։ 2

(Մատթ. 27.12. Ղուկ. 23.3. Յովհ. 18.33.)

* Եւ չարախօսէին զնմանէ յոյժ քահանայապետքն . և նա ոչինչ տայր պատասխանի ։ 3 * Իսկ պիղատոս դարձեալ հարցանէր զնա . ոչի՞նչ տաս պատասխանի . տե՛ս քանի՛ ամբաստանեն զքէն ։ 4 * Եւ Յս այնուհետև ոչ ինչ ետ պատասխանի . մինչև զարմանալ յոյժ պիղատոսի ։ 5

* Բայց ըստ տօնի արձակէր նց զմիոք կապեալ . զոր ինքեանք խնդրէին ։ 6

* Եւ էր՝ որում անուն էր Բարաբբա՝ կապեալ ընդ խռովիչսն , որոց ընդ խռովելն՝ զայր մի սպանեալ էր ։ 7

* Ի ձայն բարձր սկսաւ աղաղակել ամբոխն և խնդրել՝ որպէս սովոր էր . զի արձակեսցէ նց զԲարաբբայն ։ 8

* Պատասխանի ետ պիղատոս և ասէ ցնոսա . կամի՞ք , զի արձակեցից ձեզ զարքայն հրէից ։ 9 * Քանզի գիտէր թէ առ նախանձու մատնեցին զնա քահանայապետքն ։ 10 * Որք և զամբոխն հաւանեցուցին՝ զի արձակեսցէ նոցա զԲարաբբայն ։ 11

(Մատթ. 27.22. Ղուկ. 23.14. Յովհ. 18.40.)

* Դարձեալ պատասխանի ետ պիղատոս և ասէ ցնոսա . իսկ զի՞նչ կամիք թէ արարից զարքայն հրէից ։ 12 * Եւ նոքա դարձեալ աղաղակէին յուզեալք 'ի քահանայապետիցն , 'ի խա՛չ հան զդա ։ 13 * Ասէ ցնոսա պիղատոս . զի՞նչ ինչ չար արարեալ իցէ դորա . և նոքա առաւելեւս աղաղակէին և ասէին . 'ի խա՛չ հան զդա ։ 14

* Իսկ պիղատոս իբրև զմիտս կամեցաւ հաճել ամբոխին , արձակեաց նց զԲարաբբայն . և զՅս գան հարեալ ետ 'ի ձեռս , զի 'ի խաչ ելանիցէ ։ 15

(Մատթ. 27.27. Յովհ. 19.2.)

* Եւ զինուորքն տարան զնա 'ի ներքս 'ի գաւիթն՝ ուր հրապարակն էր . և կոչեն միանգամայն զամենայն զգունդն ։ 16

* Եւ զգեցուցանեն նմա քղամիդ կարմիր , և ծիրանիս . և եդին 'ի գլուխ նորա պսակ արարեալ 'ի փշոց ։ 17

* Եւ սկսան ողջոյն տալ նմա և ասել . ո՛ղջ եր արքայդ հրէից ։ 18 * Եւ ծեծէին զգլուխն եղեգամբ . և թքանէին ընդ երեսս . և 'ի ծունր իջեալ երկիրպագանէին նմա ։ 19 * Եւ իբրև կատակեցին զնա , մերկացուցին զքղամիդն և զծիրանիս . և զգեցուցին նմա զիւր 20



հանդերձն . և ածին արտաքս . զի 'ի խաչ հանիցեն զնա ։

(Մատթ. 27.32. Ղուկ. 23.26.)

21 * Եւ ունէին պահակ զսիմոն կիւրենացի՝ որ ընդ այն անցանէր , եկեալ յագարակէ . զհայրն աղեքսանդրի և ռուփայ . զի բարձցէ զխաչափայտն նորա ։

22 * Եւ ածեն զնա 'ի գողգոթայ՝ տեղի մի . որ թարգմանի՝ տեղի կառափելոյ ։

23 * Եւ տային նմա գինի զմռսեալ . և նա ո՛չ էառ . և հանին զնա 'ի խաչ ։

(Մատթ. 27.33. Ղուկ. 23.34. Յովհ. 19.23.)

24 * Եւ իբրև խաչեցին զնա՝ բաժանեցին զհանդերձս նր . արկեալ վիճակս 'ի վերայ՝ թէ ո՞ զինչ առնուցու ։

25 * Էր ժամ երրորդ՝ և հանին զնա 'ի խաչ ։ 26 * Եւ էր գիր վնասու նր գրեալ 27 թէ թագաւոր է հրէից ։ * Եւ ընդ նմա հանին 'ի խաչ երկուս աւազակս . մի ընդ աջմէ նր՝ և մի ընդ ահեկէ ։

(Եսայ. 53.12.)

28 * Եւ լցաւ գիրն որ ասէ , թէ ընդ 29 անօրէնս համարեցաւ ։ * Եւ որք անցանէինն , հայհոյէին զնա , շարժեալ զգլուխս իւրեանց՝ և ասէին . վա՛հ որ քակէիր զտաճարն՝ և զերիս աւուրս 30 շինէիր ։ * Փրկեա՛ զանձն քո՝ և էջ 31 'ի խաչէդ ։ * Նոյնպէս և քահանայապետքն այպն արարեալ ընդ միմեանս հանդերձ դպրօքն՝ ասէին . զայլս ապրեցոյց՝ զանձն ոչ կարէ ապրեցուցանել ։

(Յովհ. 2.19.)

32 * Քս արքայդ Իղի . իջցէ այժմ 'ի խաչէ այտի . զի տեսցուք և հաւատասցուք դմա . և որք ընդ նմա 'ի խաչն ելեալ էին՝ նախատէին զնա ։

*Եւ

* Եւ իբրեւ վեց ժամեղեւ՝ խաւար կա 33
լաւ զամ երկիր մինչեւ յինն ժամ։
* Եւ յիններորդ ժամուն աղաղակեաց 34
Յս ՚ի ձայն մեծ եւ ասէ. Էղի՛ Էղի՛ ղա
մասաբաքթանի. որ թարգմանի. Ած
իմ, Ած իմ, ընդէ՞ր թողեր զիս։

Սաղմ. 21.2. Մատթ. 27.46.

* Եւ ոմանք ՚ի նոցանէ՝ որք շուրջն կայ 35
ին զնոյն լուեալ՝ իբրեւ լուան, ասէին թէ
զեղիա կարդայ։ * Եւ ընթացեալ 36
միոյն՝ ելից սպունգ մի քացախով. եւ
հարեալ յեղեգան՝ տայր ըմպել նմա.
եւ ասէ՝ թո՛յլ տուք՝ տեսցուք, գայ ե-
ղիա իջուցանել զդա։ * Եւ Յս արձա 37
կեաց զձայն մեծ՝ եւ եհան զոգի։
* Եւ վարագոյր տաճարին պատառե 38
ցաւ յերկուս, ՚ի վերուստ մինչեւ ՚ի խո
նարհ։ * Եւ տեսեալ հարիւրապե- 39
տին՝ որ կայր անդ՝ եթէ աղաղակեաց
եւ եհան զոգի, ասէ. արդարեւ այրս
այս՝ որդի Այ էր։ * Էին եւ կանայք՝ 40
որք հայէին ՚ի հեռաստանէ. յորս էր
մարիամ մագդաղենացի. եւ մարիամ
յակոբու փոքրկան. եւ յօսեայ մայրն.
եւ սաղոմէ։ * Որք յորժամ էրն ՚ի գա 41
լիլեա, զհետ շրջէին նր, եւ պաշտէին
զնա. եւ այլք բազումք կանայք՝ որք
ընդ նմա իսկ եկեալ էին յեմ։

Մատթ. 27.55. Ղուկ. 8. 2.

* Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ (քանզի ուր 42
բաթ էր՝ որ ՚ի շաբաթն մտանէր։)
* Եկեալ յովսէփ՝ որ յարիմաթեայն 43
էր. այր պարկեշտ նախարար, որ եւ
ինքն իսկ ակնունէր արքայութեն Այ.
համարձակեցաւ՝ եմուտ առ պիղա-
տոս. եւ խնդրեաց զմարմինն Յի։
* Եւ պիղատոս զարմացաւ, թէ այն- 44
չափ վաղ մեռաւ. եւ կոչեալ առ ինքն
զհարիւրապետն, եհարց զնա, եւ ասէ՝
թէ արդարեւ այնչափ վաղ մեռաւ։
* Եւ իբրեւ ստուգեաց ՚ի հարիւրա- 45
պետէ անտի, շնորհեաց զմարմինն յօ
սէփայ։ * Եւ յօսէփ գնեաց կտաւ՝ եւ 46
իջուցեալ զնա՝ պատեաց կտաւովն. եւ
եդ ՚ի գերեզմանի. որ էր փորեալ ՚ի վէ
մէ. եւ թաւալեցոյց զվէմ մի ՚ի դուռն
գերեզմանին։ * Իսկ մարիամ մագդա 47
ղենացի. եւ մարիամ յակոբայ՝ եւ յօ-
սեայ, տեսին զտեղին՝ ուր եդաւ։

Մատթ. 27.57. Ղուկ. 23. 50. Յովհ. 19. 38.

## ԳԼ: ԺԶ:

Եւ իբրեւ եանց շաբաթն՝ մա- 1
րիամ մագդաղենացի՝ եւ մա-
րիամ յակոբայ եւ սաղոմէ, գնեցին պատ
րաստեցին խունկս. զի եկեսցեն եւ օծ
ցեն զնա։ * Եւ ընդ առաւօտս միաշա 2
բաթուն, գան ՚ի գերեզմանն ընդ ա-

Մատթ. 28.1. Ղուկ. 24.1. Յովհ. 20. 1.

3 ռեւագալն։ * Եւ ասէին ցմիմեանս,
ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ՚ի
4 դրանց գերեզմանին։ * Եւ հայեցեալ ՚ի
տեսին՝ զի թաւալեցուցեալ էր վէմն
՚ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ։
5 * Եւ մտեալ ՚ի ներքս ՚ի գերեզմանն՝
տեսին զերիտասարդ մի, զի նստէր ՚ը
աջմէ կողմանէ, զգեցեալ պատմու-
ճան սպիտակ. եւ զարհուրեցան։
6 * Եւ նա ասէ ցնոսա. մի՛ երկնչիք՝ զՅս
խնդրէք զնազովրեցի զխաչելեալն, յա-
րեաւ. չէ՛ աստ. ահաւադիկ տեղին,
7 ուր եդին զնա։ * Այլ երթա՛յք ասա
ցէք ցաշակերտս նորա, եւ ցպետրոս,
թէ ահա յառաջագոյն երթայ քան
զձեզ ՚ի գալիլեա. անդ տեսանիցէք
8 զնա, որպէս ասացն ձեզ։ * Եւ իբրեւ
լուան, ելին եւ փախեան ՚ի գերեզմա
նէն, քանզի զահի հարեալ էին. եւ ո՛չ
ումեք ինչ ասացին. զի երկնչէին։

Մատթ. 28. 5. Ղուկ. 24. 4. Յովհ. 20. 12. Մարկ. 14. 28.

9 * Յարուցեալ Յս առաւօտուն, ա-
ռաջին միաշաբաթուն, երեւեցաւ մա-
րիամու մագդաղենացւոյ, յորմէ հա-
10 նեալ էր զեօթն դեւսն։ * Եւ նա եր-
թեալ պատմեաց այնոցիկ՝ որք ընդ-
նմայն էին, մինչդեռ լային եւ սգային։
11 * Նոքա իբրեւ լուան թէ կենդանի է,
եւ երեւեցաւ նմա՝ ո՛չ հաւատացին։
12 * Յետոյ երեւեցաւ այլով կերպարա-
նաւ † որք երթային յանդաստան։
13 * Նոքա չոգան պատմեցին այլոց. եւ
ո՛չ նոցա հաւատացին։
14 * Յետոյ մինչդեռ բազմեալ էին մե-
տասանքն, երեւեցաւ նց. եւ թշնամա
նեաց զանհաւատութի նց, եւ զխստա-
սրտութի. զի որ երեւեցաւ նց յարու-
ցեալ ՚ի մեռելոց՝ եւ ո՛չ հաւատացին։
15 * Եւ ասէ ցնս. երթա՛յք յաշխարհ ամ.
եւ քարոզեցէք զաւետարանն արքայու
16 թեն ամ արարածոց։ * Որ հաւատաս
ցէ եւ մկրտեսցի, կեցցէ. եւ որ ոչն հա
ւատասցէ՝ դատապարտեսցի։
17 * Նշանք այնոցիկ՝ որք հաւատան, եր-
թիցեն զհետ այնոցիկ. յանուն իմ
դեւս հանցեն. լեզուս խօսեսցին։
18 * Ի ձեռս իւրեանց օձս բարձցեն. եւ
եթէ զմահացու ինչ դեղ արբցեն, նց
ինչ ո՛չ վնասեսցէ. ՚ի վերայ հիւան-
դաց ձեռս դիցեն՝ եւ բժշկեսցին։
19 * Եւ ինքն Տր Յս յետ խօսելոյն ընդ
նոսա՝ համբարձաւ յերկինս. եւ նստաւ
20 ընդ աջմէ Հօր։ * Եւ նոքա ելեալ քա
րոզեցին ընդ ամ երկիր՝ Տն գործակ-
ցութե. եւ զբանն հաստատէին ամ
նշանօք՝ որք երթային զհետ նոցա։

Յովհ. 20. 16. Ղուկ. 24. 13. † երկու ՚ի նոցանէ
Գործ. 16. 18. Գործ. 2. 4. 10. 46. Գործ. 28. 5. Գործ. 28. 8. Ղուկ. 24. 51.



Ասէ ցնա հրեշտակն Տ՟ն, մի՛ երկնչիր Զաքարիա, զի լուեալ եղեն աղօթք քո: Ղուկ. 1. 13.



Եւ եկեալ առ նա հրեշտակն ասէ. ուրախ լեր բերկրեալդ՝ Տէր ընդ քեզ: Ղուկ. 1. 28.

# ՍՐԲՈՅ ԱՒԵՏԱՐԱՆԻՍ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ. ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ:

## Գլուխ Առաջներորդ:



1 ԱՆԶԻ ԲԱԶՈՒՄՔ յօժարեցան վերստին կարգել զպատմութի՟ն վասն իրացն հաստատելոց 'ի մեզ:

2 * Որպէս աւանդեցին մեզ որք 'ի սկզբանէ ականատեսք եւ սպասաւորք եղեն բանին:

3 * Կամ եղեւ եւ ինձ. որ 'ի սկզբանէ զհետ երթեալ էի ամի՟՝ ճշմարտութե՟՝ կարգաւ գրել քեզ՝ քաջդ Թէօփիլէ:

4 * Զի ծանիցես զբանից, որոց աշակերտեցար, զճշմարտութի՟:

5 * Եւ եղեւ յաւուրս Հերովդի արքայի Հրէաստանի, քահանայ ոմն անուն Զաքարիա 'ի դասակարգէ աբիայ. եւ ‖ կին նորա 'ի դստերաց Ահարոնի. եւ անուն նո՟ր Եղիսաբէթ:

‖ 1. Մ՟նա 24. 10.

6 * Եւ էին արդարք երկոքին առաջի Ա՟Յ. գնային յամենայն պատուիրանս՝ եւ յիրաւունս Տ՟ն անարատք:

7 * Եւ ոչ գոյր նոցա որդեակ. քանզի Եղիսաբէթ ամուլ էր. եւ երկոքեան անցեալք էին զաւուրբք իւրեանց:

8 * Եւ եղեւ 'ի քահանայանալն նորա ըստ կարգի աւուրցն հասանելոյ առաջի Ա՟Յ:

9 * Ըստ օրինի քահանայութե՟ն էհաս նմա՝ խունկ արկանել՝ մտեալ 'ի տաճարն Տ՟ն:

10 * ‖ Եւ ամենայն բազմութի՟ ժողովրդեանն կային յաղօթս արտաքոյ 'ի ժամ խնկոցն:

‖ Ելից. 30. 8. Ղեւ. 16. 17.

11 * Եւ երեւեցաւ նմա հրեշտակ Տ՟ն. զի կայր ընդ աջմէ սեղանոյ խնկոցն:

12 * Եւ խռովեցաւ զաքարիա իբրեւ ետես. եւ անկաւ ահ 'ի վերայ նորա:

* Ասէ

13 *Եւ ասէ ցնա հրեշտակն Տն. մի երկնչիր զաքարիա. զի լուեալ եղեն աղօթք քո. եւ կին քո եղիսաբեթ ծնցի քեզ որդի. եւ կոչեսցես զանուն նր յօհաննէս: 14 *Եւ եղիցի քեզ ուրախութի եւ ցնծութի. եւ բազումք 'ի ծննդեան նր խնդասցեն: 15 *Զի եղիցի մեծ առաջի Տն. եւ գինի եւ օղի մի արբցէ. եւ հոգւով սրբով լցցի անդստին յորովայնէ մօր իւրոյ: 16 *Եւ զբազումս յորդւոցն իլի դարձուսցէ 'ի Տր Ած իւրց: 17 *Եւ ինքն եկեսցէ առաջի նր հոգւով եւ զօրութբ եղիայի. ‖ դարձուցանել զսիրտս հարց յորդիս. եւ զանհաւանս յիմաստութի արդարոց. պատրաստել Տն ժողովուրդ կազմեալ:

‖ Մաղ. 4. 6
Մատ. 11. 14.

18 *Եւ ասէ զաքարիա ցհրեշտակն. եւ իւ՞ գիտացից զայդ. զի ես ծեր եմ. եւ կին իմ անցեալ զաւուրբք իւրովք: 19 *Պատասխանի ետ հրեշտակն եւ ասէ ցնա. ես եմ գաբրիէլ որ կամ առաջի Այ. եւ առաքեցայ խօսել ընդ քեզ՝ եւ աւետարանել քեզ զայդ: 20 *Եւ ահա եղիցիս համր, եւ մի կարասցես խօսել մինչեւ ցօրն՝ յորում այդ լինիցի. փոխանակ զի ոչ հաւատացեր բանից իմոց՝ որք լցցին 'ի ժամանակի իւրեանց: 21 *Եւ ժողովուրդն ակն ունէր զաքարիայ. եւ զարմանային ընդ յամելն նր 'ի տաճարին: 22 *Եւ իբրեւ ել՝ ոչ կարէր խօսել ընդ նոսա. եւ իմացան թէ տեսիլ ետես 'ի տաճարին. եւ նա նշանացի խօսէր ընդ նոսա. եւ կայր պապանձեալ: 23 *Եւ եղեւ իբրեւ լցան աւուրք պաշտաման նորա, գնաց 'ի տուն իւր: 24 *Եւ յետ աւուրցն այնոցիկ յղացաւ եղիսաբեթ կին նր. եւ թաքուցանէր զանձն ամիսս հինգ, եւ ասէր: 25 *Զինչ գործ գործեաց ընդ իս Տէր՝ յաւուրս յորս հայեցաւ յիս բառնալ զնախատինս իմ 'ի մարդկանէ:

26 *Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ գաբրիէլ հրեշտակ յԱյ 'ի քաղաք մի գալիլեացւոց. որում անուն էր նազարեթ: 27 *Առ կոյս, խօսեցեալ առն. որում անուն էր յովսէփ, 'ի տանէ դաւթի. եւ անուն կուսին մարիամ: 28 *Եւ եկեալ առ նա հրեշտակն ասէ. ուրախ լեր բերկրեալդ՝ Տր ընդ քեզ †: 29 *Եւ նա ընդ բանսն խռովեցաւ. եւ խորհէր ընդ միտս, թէ որպիսի ինչ իցէ ողջոյնս այս: 30 *Եւ ասէ ցնա հրեշտակն. մի երկնչիր Մարիամ. զի գտեր շնորհս յԱյ: 31 *‖ Եւ ահա յղասջիր՝ եւ ծնցիս որդի. ‖ եւ կոչեսցես զանուն նր Յս: 32 *Նա եղիցի մեծ. եւ որդի բարձրելոյ կոչեսցի. եւ տացէ նմա Տր Ած զաթոռն դաւթի հօր նորա. ‖ եւ թագաւորեսցէ 'ի վր տանն յակոբայ 'ի յաւիտեանս: 33 *Եւ թագաւորութեն նր վախճան մի լիցի: 34 *Եւ ասէ մարիամ ցհրեշտակն. զիա՞րդ լինիցի ինձ այդ. քանզի զայր ոչ գիտեմ: 35 *Պատասխանի ետ հրեշտակն եւ ասէ ցնա. Հոգին սուրբ եկեսցէ 'ի քեզ. եւ զօրութի բարձրելոյն հովանի լիցի 'ի վերայ քո: քանզի եւ որ ծնանելոցն է 'ի քէն, սուրբ է. եւ որդի Այ կոչեսցի: 36 *Եւ ահա եղիսաբեթ ազգական քո՝ եւ նա յղի է 'ի ծերութեն իւրում. եւ այս վեցերորդ ամիս է նորա՝ որ ամուլն կոչեցեալ է: 37 *Զի ոչ տկարասցի առ յԱյ ամենայն բան: 38 *Եւ ասէ Մարիամ՝ ահաւասիկ կամ աղախին Տն. եղիցի ինձ ըստ բանի քում. եւ գնաց 'ի նմանէ հրեշտակն:

† օրհնեալ ես դու 'ի կանայս
‖ Եսայ. 7. 14.
‖ Մտթ. 2. 21.
‖ Դանիէ. 7. 14. 27.
Միք. 4. 7.



39 *Յարուցեալ մարիամ յաւուրսն յայնոսիկ, գնաց 'ի լեռնակողմն փութապէս 'ի քաղաքն յուդայ: 40 *Եւ եմուտ 'ի տուն զաքարիայ. եւ ետ ողջոյն եղիսաբեթի: 41 *Եւ եղեւ իբրեւ լուաւ զողջոյնն մարիամու եղիսաբեթ, խաղաց մանուկն յորովայնի նորա. եւ լցաւ եղիսաբեթ Հոգւով սրբով: 42 *Եւ 'ի ձայն բարձր աղաղակեաց եւ ասէ: Օրհնեալ ես դու 'ի կանայս. եւ օրհնեալ է պտուղ որովայնի քո: 43 *Եւ ուստի՞ է ինձ այս. զի եկեսցէ մայր Տն իմոյ առ իս: 44 *Զի ահաւասիկ իբրեւ եղեւ ձայն ողջունի քո յականջս

կանչս իմ, խաղաց ցնծալով մանուկս յորովայնի իմում։ 45 *Եւ երանի, որ հաւատայցէ եթէ եղիցի կատարումն ասացելոց նմա ի Տէ։ 46 *Եւ ասէ Մարիամ. մեծացուսցէ անձն իմ զՏր։ 47 *Եւ ցնծացաւ հոգի իմ յԱծ փրկիչ իմ։ 48 *Զի հայեցաւ ի խոնարհութի աղախնոյ իւրոյ. զի ահա յայսմ հետէ երանեսցեն ինձ ամենայն ազգք։ 49 *Զի արար ինձ մեծամեծս հզօրն. և սուրբ է անուն նր։ 50 *Եւ ողորմութի նր յազգս յազգս երկիւղածաց իւրոց։ 51 *Արար զզօրութի բազկաւ իւրով. ցրուեաց զամբարտաւանս մտօք սրտից իւրեանց։ 52 *Եւ քակեաց զհզօրս յաթոռոց. և բարձրացոյց զխոնարհս։ 53 *Զքաղցեալս լցոյց բարութբ. և զմեծատունս արձակեաց ունայնս։ 54 *Պաշտպանեաց Իլի ծառայի իւրոյ՝ յիշել զողորմութի իւր։ 55 *Որպէս խօսեցաւ առ հարս մեր. Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան։ 56 *Եկաց մարիամ առ նմա իբրև ամիսս երիս, և դարձաւ ի տուն իւր։

57 *Եւ եղիսաբեթի լցան ժամանակք ծննդեան. և ծնաւ զորդի։ 58 *Եւ լուան որք շուրջ զնովաւ էին. և ազգատոհմք նր. զի մեծ արար Տր զողորմութի իւր ընդ նմա. և խնդային ընդ նմա։

59 *Եւ եղև յաւուրն ութերորդի՝ եկին թլփատել զմանուկն. և կոչէին զնա յանուն հօր իւրոյ զաքարիա։ 60 *Պատասխանի ետ մայր նր և ասէ. ո՛չ այլ կոչեսցի յօհաննէս։ 61 *Եւ ասեն ցնա՝ քանզի ոչ ոք է յազգի քում, որոյ կոչի անուն յօհաննէս։ 62 *Ակնարկէին հօրն նր թէ զի՛նչ կամիցի կոչել զնա։ 63 *Եւ խնդրեաց տախտակ՝ գրեաց և ասէ. յօհաննէս է անուն դորա։ և զարմացան ամենեքին։ 64 *Եւ բացաւ բերան նր վաղվաղակի, և լեզու նր. և խօսէր՝ և օրհնէր զԱծ։ 65 *Եւ եղև ահ ի վր ամենեցուն՝ որք լսէին զայս. և որք շուրջ բնակեալք էին զնոքօք. և ընդ ամ լեռնակողմն հրէաստանի պատմէին ամ բանքս այսոքիկ։ 66 *Եւ եդին ամենեքեան՝ որք լսէինն՝ ի սիրտս իւրեանց՝ և ասէին. զի՛նչ լինիցի մանուկս այս։ և ձեռն Տեառն էր ընդ նմա։

67 *Եւ զաքարիա հայր նորա՝ լցաւ հոգւով սրբով՝ մարգարէացաւ և ասէ։ 68 *Օրհնեալ Տր Աստուած Իլի. զի յայց ել մեզ. և արար զփրկութի ժողովրդեան իւրոյ։ 69 *Եւ յարոյց զեղջիւր փրկութե մեզ ի տանն դաւթի ծառայի իւրոյ։ 70 *Որպէս խօսեցաւ բերանով սրբոցն՝ որք յաւիտենից մարգարէքն նր էին։ 71 *Փրկութի ի թշնամեաց մերոց. և ի ձեռաց ամ ատելեաց մերոց։ 72 *Առնել զողորմութի ընդ հարս մեր. և յիշել զուխտն իւր սբ։ 73 *Զերդումն, զոր երդուաւ աբրահամու հօր մերում, տալ մեզ։ 74 *Առանց երկիւղի, ի ձեռաց թշնամեաց մերոց փրկեալս, պաշտել զնա։ 75 *Սրբութբ և արդարութբ առաջի նր, զամ աւուրս կենաց մերոց։ 76 *Եւ դու մանուկ, մարգարէ բարձրելոյն կոչեսջիր. զի երթիցես առաջի երեսաց Տն. պատրաստել զճանապարհս նր։ 77 *Տալ զգիտութի փրկութե ժողովրդեան նր. ի թողութի մեղաց նոցա։ 78 *Վասն գթութեց ողորմութե այ մերոյ. որովք այց արար մեզ արեգակն ի բարձանց։ 79 *Երևել որոց ի խաւարի և ի ստուերս մահու նստէին. ուղղել զոտս մեր ի ճանապարհս խաղաղութե։ 80 *Եւ մանուկն աճէր՝ և զօրանայր հոգւով. և էր յանապատս մինչև յօր երևելոյ նր Իլի։

Margin references: Եսայ. 51. 9. — Սաղմ. 32. 10. — Ա Թագ. 2. 5. — Սաղմ. 33. 11. — Ծննդ. 17. 9. և 22. 16. — Սաղմ. 131. 11. — Եսայ. 41. 8. — Մէր. 13. — Սաղմ. 73. 12. — Սաղմ. 131. 17. — Երեմ. 23. 6. և 30. 10. — Ծննդ. 22. 16. — Երեմ. 31. 33. — Եբրայ. 6. 13. և 17. — Մաղա. 4. 5. — Մէր. 17. — Զաք. 3. 8. և 6. 12. — Մաղա. 4. 2.

## ԳԼ: Բ.

1 Եւ եղև ի աւուրսն յայնոսիկ. ել հրաման յօգոստոս կայսերէ՝ աշխարհագիր առնել ընդ ամ տիեզերս։ 2 *Այս առաջին աշխարհագիր եղև ի դատաւորութե ասորւոց կիւրենեայ։ 3 *Եւ երթային ամենեքեան մտանել յաշխարհագիր յիւրաքանչիւր քաղաքի։ 4 *Ել և յովսէփ ի գալիլեէ ի քաղաքէ նազարեթէ ի հրէաստան, ի քաղաք



դաւթի, որ կոչի բեթղեհեմ՝ վն լի-նելոյ նր ՚ի տանէ՝ և յազգէ դաւթի։

5 * Մտանել յաշխարհագիր մարիամաւ հանդերձ, որ խօսեցեալն էր նմա. և էր յղի։

6 * Եւ եղև ՚ի հասանել նոցա անդր, լցան աւուրք ծնանելոյ նորա։

7 * Եւ ծնաւ զորդին իւր զանդրանիկ՝ և եդ և պատեաց զնա ՚ի խանձարուրս՝ և եդ զնա ՚ի մսուր. զի ոչ գոյր նոցա տեղի իջեւանին։

8 * Եւ հովիւքն էին ՚ի տեղւոջն յայնմիկ բացօթեայք՝ որք պահէին զպահպանութիւս գիշերոյ հօտից իւրց։

9 * Եւ հրեշտակ Տն երևեցաւ նոցա. և փառք Տն ծագեցան առ նոսա. և երկեան յերկիւղ մեծ։

10 * Եւ ասէ ցնս հրեշտակն. մի երկնչիք, զի ահաւասիկ աւետարանեմ ձեզ զուրախութի մեծ. որ եղիցի ամենայն ժողովրդեանն։

11 * Զի ծնաւ ձեզ այսօր փրկիչ. որ է օծեալ Տր ՚ի քաղաքի դաւթի։

12 * Եւ այս նշանակ ձեզ. գտանիցէք մանուկ պատեալ ՚ի խանձարուրս. և եդեալ ՚ի մսուր։

13 * Եւ յանկարծակի եղև ընդ հրեշտակին ը այնմիկ բազմութի զօրաց երկնաւորաց. որք օրհնէին զԱծ և ասէին։

14 * Փառք ՚ի բարձունս Այ. և յերկիր խաղաղութի, ՚ի մարդիկ հաճութի։

15 * Եւ եղև իբրև վերացան ՚ի նոցանէ հրեշտակքն յերկինս, ասեն ցմիմեանս հովիւքն. եկայք, երթիցուք մինչև ցբեթղեհեմ, և տեսցուք, զինչ է բանս այս՝ որ եղև. զոր Տր եցոյց մեզ։

16 * Եւ եկին փութանակի. և գտին զմարիամ և զյովսէփ. և զմանուկն եդեալ ՚ի մսուր։

17 * Եւ ծանեան վն բանին՝ որ ասացաւ նոցա զմանկանէն։

18 * Եւ ամենեքեան որք լսէին, զարմանային վասն բանիցն՝ զոր խօսեցան ընդ նոսա հովիւքն։

19 * Եւ մարիամ զամ զբանս զայսոսիկ պահէր. և խելամուտ լինէր ՚ի սրտի իւրում։

20 * Եւ դարձան հովիւքն, փառաւոր առնէին և օրհնէին զԱծ, վն ամի զոր լուան, և տեսին. որպէս պատմեցաւ նց։

21 * Եւ իբրև լցան աւուրք ութ թլփատել զնա. և կոչեցաւ անուն նորա Յս՝ որ կոչեցեալն էր ՚ի հրեշտակէն, մինչև յղացեալ էր զնա յորովայնի։

22 * Եւ իբրև լցան աւուրք սրբութե նորա ըստ օրինացն մովսէսի, ածին զնա յերուսաղէմ յանդիման առնել Տն։

23 * Որպէս և գրեալ է յօրէնս Տն. թէ ամ արու, որ բանայ զարգանդ, սուրբ Տն կոչեսցի։

24 * Եւ տալ պատարագս ըստ ասացելոյն յօրէնս Տն. զոյգս տատրակաց. կամ երկուս ձագս աղաւնեաց։

25 * Եւ ահա այր մի էր յերուսաղէմ. որոյ անուն էր սիմէօն. և էր այրն այն արդար և երկիւղած. և ակն ունէր մխիթարութեանն Իէղի. և հոգի սուրբ էր ՚ի նմա։



26 * Եւ էր նորա հրաման առեալ ՚ի հոգւոյն սրբոյ՝ մի տեսանել զմահ մինչև տեսցէ զօծեալն Տն։

27 * Եւ եկն հոգւովն ՚ի տաճարն. իբրև ածին ծնողքն զմանուկն Յս՝ առնել նոցա ըստ սովորութե օրինացն ՚ի վերայ նորա։

28 * Եւ նա առ ընկալաւ զնա ՚ի գիրկս իւր. և օրհնեաց զԱծ և ասէ։

29 * Արդ արձակես զծառայս քո Տր ըստ բանի քում ՚ի խաղաղութիւն։

30 * Զի տեսին աչք իմ զփրկութի քո։

31 * Զոր պատրաստեցեր առաջի ամ ժողովրդոց։

32 * Լոյս ՚ի յայտնութի հեթանոսաց. և փառս ժողովրդեան քում Իէղի։

33 * Եւ էին հայր և մայր նր զարմացեալք ՚ի վն բանիցն, որք խօսէին զնմանէ։

34 * Եւ օրհնեաց զնոսա սիմէօն. և ասէ ցմարիամ մայր նորա. ահա սա կայ ՚ի գլորումն և ՚ի կանգնումն բազմաց ՚ի մէջ Իէղի. և ՚ի նշան հակառակութե։

35 * Եւ ընդ քո իսկ անձն անցցէ սուր. զի յայտնեսցին ՚ի բազմաց սրտից խորհուրդք։

36 * Եւ անդ էր աննա մարգարէ, դուստր փանուէլի յազգէ ասերայ. սա ինքն անցեալ էր զաւուրբք բազմօք՝ կեցեալ ընդ առն ամս եօթն ՚ի կուսութէ իւրմէ։

37 * Եւ էր այրի ամաց իբրև ութսունև չորից. որ ոչ մեկնէր ՚ի տաճարէն.

րէն. այլ պահօք և աղօթիւք պաշտէր
զցայգ և զցերեկ ։ * Եւ սա 'ի նմին ժա 38
մու յարուցեալ գոհանայր զՏէ. և խօ
սէր զնմանէ ընդ ամենեսին՝ որք ակն
ունէին փրկութեան Եհմի ։ * Եւ իբրև 39
կատարեցին զամ ըստ օրինացն Տն ,
դարձան անդրէն 'ի գալիլեա 'ի քա_
ղաքն իւրեանց նազարեթ ։ * Եւ մա 40
նուկն աճէր և զօրանայր լի իմաստու
թբ. և շնորհք այ էին 'ի վերայ նորա ։
* Եւ երթային ծնօղք նորա ամի ամի 41
‖ Ելից. յեհմ ‖ 'ի տօնի զատկին ։ * Եւ իբրև 42
23. 15. եղեն նորա ամք երկոտասան՝ ելանել
և 34. 18 նոցա յեհմ ըստ սովորութե տօնին ։
Բ. Օրէ. * Եւ կատարել զաւուրսն . և դառ_ 43
16. 1. նալ անդրէն, մնաց Յս մանուկն յեհմ.
և ոչ գիտացին ծնօղք նորա ։
* Կարծէին զնմանէ թէ ընդ ուղե_ 44
կիցսն իցէ . եկին իբրև աւուր միոյ
ճանապարհ . և խնդրէին զնա ընդ
դրացիսն և ընդ ծանօթս ։
*Եւ իբրև ոչ գտին , դարձան անդ_ 45
րէն յեհմ խնդրել զնա ։



* Եւ եղև յետ երից աւուրց՝ գտին 46
զնա 'ի տաճարին . զի նստէր ընդ վար
դապետսն, լսէր 'ի նոցանէ . և հարցա_
նէր զնոսա ։ * Զարմանային ամենե 47
քեան՝ որք լսէին 'ի նմանէ ընդ իմաս_
տութիւն և ընդ պատասխանիս նորա ։
* Եւ իբրև տեսին զնա՝ զարմացան . 48
և ասէ ցնա մայրն իւր . որդեակ՝ զի՞նչ
գործ գործեցեր դու ընդ մեզ . ահա՛

ախիւ հայր քո և ես տառապէաք՝ և
49 խնդրէաք զքեզ ։ * Եւ ասէ ցնոսա .
զի՞ խնդրէիք զիս . ո՞չ գիտէիք եթէ 'ի
տան հօր իմոյ պարտ է ինձ լինել ։
50 * Եւ նոքա ոչ իմացան զբանն . զոր խօ
51 սեցաւ ընդ նոսա ։ * Եւ էջ ընդ նս .
և գնաց 'ի նազարեթ՝ և էր նոցա հնա
զանդ . և մայր նորա պահէր զամ
զբանսն 'ի սրտի իւրում ։ * Եւ Յս
52 զարգանայր իմաստութբ . և հասա_
կաւ. և շնորհօք յԱյ և 'ի մարդկանէ ։

## Գլ: Գ.

1 Ի հնգետասաներորդի ամի տէրու_
թեն տիբերեայ կայսեր . 'ի դա_
տաւորութեն հրէաստանի. պիղատո_
սի պոնտացւոյ . և 'ի չորրորդ պետութե
գալիլեացւոց հերովդի . և 'ի փիլիպ_
պոսի եղբօր նորա չորրորդպետութե ,
իտուրացւոց՝ և տրաքոնացւոց աշխար
հին . և 'ի չորրորդ պետութե՝ լիւսա_
2 նեայ աբիլինացւոց ։ * ‖ Եւ 'ի քահա ‖ Գործ.
նայապետութե աննայի և կայիափայ. 4. 6.
եղև բան այ 'ի վերայ յօհաննու որդ
ւոյ զաքարիայ՝ յանապատի անդ ։
3 * ‖ Եւ եկն յամ կողմն յորդանանու ‖ Մատ.
քարոզել մկրտութի ապաշխարութե 3. 1.
4 'ի թողութի մեղաց ։ * Որպ և գրեալ է Մարկ.
'ի գիրս պատգամաց եսայեայ մարգա 1. 4.
րէի . ‖ ձայն բարբառոյ յանապատի . ‖ Եսայ.
պատրաստ արարէք զճանապարհ Տն . 40. 3.
և ուղիղ արարէք զշաւիղս նորա ։ Յովհ.
5 * Ամենայն ձորք լցցին . և ամ լերինք 1. 23.
և բլուրք խոնարհեսցին . և եղիցին
դժուարինք 'ի դիւրինս . և առապարքն
6 'ի հարթս ճանապարհս ։ * Եւ տեսցէ
ամենայն մարմին զփրկութի այ ։
7 * Եւ ասէ ցժողովուրդսն ելեալս մկր_
տիլ 'ի նմանէ ։ ‖ Ծնունդք իժից՝ ո ‖ Մատ.
եցոյց ձեզ փախչել 'ի բարկութենէն՝ որ 3. 7. և
8 գալոց է ։ * Արարէք այսուհետև պտ 23. 33.
ուղս արժանի ապաշխարութե . և մի
սկսանիցիք ասել՝ եթէ ունիմք հայր
զաբրահամ . զայս ասեմ ձեզ . եթէ
կարօղ է Այ 'ի քարանցս յայսցանէ
յարուցանել որդիս աբրահամու ։
9 * Բայց ահաւասիկ տապար առ արմին
ծառոց կայ ։ Ամենայն ծառ՝ որ ոչ առ_
նէ զպտուղ բարւոք՝ հատանի և 'ի
10 հուր արկանի ։ * Հարցանէին զնա և
ժողովուրդքն և ասէին . իսկ արդ՝ զի՞նչ
11 գործեսցուք ։ * Պատասխանի ետ և
ասէ ցնս . ‖ որ իցեն երկու հանդերձք՝ ‖ Յակ.
տացէ զմին այնմ , որ ոչն գուցէ . և 2. 15.
որ կայցէ կերակուր՝ նոյնպէս արաս_ 1. Յովհ.
12 ցէ ։ * Եկին և մաքսաւորք մկրտիլ . և 3. 17.
ասեն ցնա . վարդապետ զի՞նչ գործես
13 ցուք ։ * Եւ նա ասէ ցնոսա . մի ինչ

աւելի քան զհրամայեալն ձեզ առնիցէք։ 14 *Հարցանէին զնա և զինուորքն և ասէին. և մեք զի՞նչ գործեսցուք. ասէ ցնոսա՝ մի՛ զոք խռովիցէք՝ և մի՛ զոք զրպարտիցէք. շատ լիցին ձեզ թոշակքն ձեր։ 15 *Մինչ ակնունէր ժողովուրդն՝ և խորհէին ամենեքեան ՚ի սիրտս իւրեանց վս̃ Յովհաննու, միթէ նա իցէ Ք̃ս։ 16 *Պատասխանի ետ ամենեցուն և ասէ. Ես մկրտեմ զձեզ ջրով. բայց գայ զօրագոյն քան զիս. զորոյ չեմ բաւական լուծանել զկօշիկս. Նա մկրտեսցէ զձեզ հոգւովն սրբով և հրով։ 17 *Որոյ հեծանոցն ՚ի ձեռին իւրում սրբել զկալ իւր՝ և ժողովել զցորեանն ՚ի շտեմարանս իւր. և զյարդն այրեսցէ անշէջ հրով։ 18 *Բազում և այլ ինչ մխիթարութբ̃ աւետարանէր ժողովրդեանն։ 19 *Այլ Հերովդէս չորրորդապետ յանդիմանեալ ՚ի նմանէ վասն Հերովդիադայ կնոջ եղբօր իւրոյ՝ և վս̃ ամենայն չարեաց զոր գործեաց Հերովդէս։ 20 *Յաւել և զայն ևս ՚ի վերայ ամի. և եդ ՚ի բանտի զՅովհաննէս։ 21 *Եւ եղև ՚ի մկրտել ամ̃ ժողովրդեանն՝ և ընդ Յի̃ մկրտելն և կալ յաղօթս, բանալ երկնից։ 22 *Եւ իջանել Հոգւոյն սրբոյ մարմնաւոր տեսլեամբ իբրև զաղաւնի ՚ի վերայ նորա. և գալ ձայն յերկնից՝ որ ասէր. Դու ես որդի իմ սիրելի՝ ընդ քեզ հաճեցայ։ 23 *Եւ ինքն Յս̃ էր ամաց իբրև երեսնից՝ սկսեալ որպէս ողջ կարծիւր որդի յովսեփայ (որ յակոբայն) որ հեղեայն։ 24 *Որ ղևեայն։ որ մատաթեայն։ որ մելքեայն։ որ յաննեայն։ որ յովսէփայն։ 25 *Որ մատաթեայն։ որ ամոսայն։ որ նաւումայն։ որ եսղեայն։ որ նանգեայն։ 26 *Որ մահաթայն։ որ մատաթեայն։ որ սեմեայն։ որ յովսէքեայն։ որ յովդեայն։ 27 *Որ յովնանայն։ որ ռեսայն։ որ զօրաբաբելին։ որ սաղաթիէլին։ որ ներեայն։ 28 *Որ մելքեայն։ որ ադդեայն։ որ կոսամայն։ որ եղմոդադայն։ որ էրայն։ 29 *Որ յեսուայն։ որ եղիազարայն։ Որ յօրամայն։ որ մատաթայն, որ ղևեայն։ 30 *Որ սիմէօնին։ որ յուդային։ որ յովսէփայն։ որ յովնամայն։ որ եղիակիմայն։ 31 *Որ մելկայն։ որ մեննեայն։ որ մատաթայն։ որ նաթանայն։ որ դաւթին։ 32 *Որ յեսսեայն։ որ օբեդայն։ որ բոոսայն։ որ սաղմոնայն։ որ նաասոնին։ 33 *Որ ամինադաբայն։ որ արամայն։ (որ ադմեայն։ որ առնեայն։) որ եսրոմայն։ որ փարեսին։ որ յուդային։ 34 *Որ յակոբայն։ որ իսահակայն։ որ աբրահամուն։ որ թարային։ որ նաքորայն։ 35 *Որ սերուքայն։ որ ռագաւայն։ որ փաղեկայն։ որ եբերայն։ որ սաղային։ 36 *Որ կայնանայն։ որ արփաքսադայն։ որ սեմայն։ որ նոյին։ որ ղամեքայն։ 37 *Որ մաթուսաղային։ որ ենոքայն։ որ յարեդին։ որ մաղաղիէլին։ որ կայնանայն։ 38 *Որ ենովսայն։ որ սեթայն։ որ ադամայն։ որ Ա̃յ։

## ԳԼ։ Դ։

1 Եւ Յս̃ լի հոգւով սրբով դարձաւ ՚ի յորդանանէ. և վարիւր հոգւովն յանապատ։ 2 *Աւուրս քառասուն փորձեալ ՚ի սատանայէ։ և ոչ եկեր՝ և ոչ ինչ յաւուրս յայնոսիկ. և ՚ի կատարելն նոցա՝ քաղցեաւ։ 3 *Եւ ասէ ցնա սատանայ. եթէ Որդի ես Ա̃յ՝ ասա՛ քարիդ այդմիկ՝ զի հաց լիցի։ 4 *Պատասխանի ետ նմա Յս̃ և ասէ. գրեալ է. Եթէ ոչ հացիւ միայն կեցցէ մարդ՝ այլ ամ̃ բանիւ Ա̃յ։ 5 *Եւ հանեալ զնա ՚ի լեառն մի բարձր՝ եցոյց նմա զամենայն թագաւորութիս աշխարհի ՚ի վայրկեան ժամանակի։ 6 *Եւ ասէ ցնա սատանայ. քեզ տաց զայս ամ̃ իշխանութի՛ և զփառս սոցա. զի ինձ տուեալ է՝ և ում կամիմ տամ զսա։ 7 *Արդ՝ դու եթէ անկեալ երկիր պագանիցես առաջի իմ, քեզ եղիցի ամ̃։ 8 *Պատասխանի ետ նմա Յս̃ և ասէ. գրեալ է. Երկիրպագցես Տն̃ Այ̃ քում. և զնա միայն պաշտեսցես։ 9 *Եւ եած զնա յեր̃մ. և կացոյց զնա ՚ի վերայ աշտարակի տաճարին. և ասէ ցնա. եթէ որդի ես Ա̃յ, արկ զքեզ աստի ՚ի վայր։ 10 *Զի գրեալ է՝ եթէ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վս̃ քո՝ պահել զքեզ։ 11 *Զի ՚ի վե̃ ձեռաց բարձցեն զքեզ՝ մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո։ 12 *Պատասխանի ետ նմա Յս̃, և ասէ. ասացեալ է. Թէ ոչ փորձեսցես զՏր̃ Ա̃ծ քո։ 13 *Եւ կատարեալ զամենայն փորձութիւն սատանայի, ՚ի բաց եկաց ՚ի նմանէ առ ժամանակ մի։

14 *Եւ դարձաւ Յս̃ զօրութբ̃ հոգւոյն ՚ի գալիլեա. ևել համբաւ զնմանէ ընդ ամենայն կողմանս գաւառին։ 15 *Եւ նա ուսուցանէր ՚ի ժողովուրդս նց̃ փառաւորեալ յամենեցունց։ 16 *Եւ եկն ՚ի նազարէթ՝ ուր սնեալ էր. և եմուտ ըստ սովորութե̃ իւրում յաւուր շաբաթու ՚ի ժողովուրդն։ 17 *Եւ ետուն նմա գիրս զեսայեայ մարգարէի. և յարեաւ ընթեռնուլ. և իբրև եբաց զգիրսն՝ եգիտ զայն տեղի, յորում գրեալն էր։ 18 *Հոգի Տն̃ ՚ի վերայ իմ. վասն որոյ և

և եօծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս † : *Քարոզել գերեաց զթողութիւն. և կուրաց տեսանել. արձակել զվիրաւորս 'ի թողութիւն. քարոզել զտարեկան Տն ընդունելի. և զօր հատուցման: 19

† Բժշկել զբեկեալս սրտիւ

20 * Եւ խփեալ զգիրսն՝ ետ ցպաշտօնեայն և նստաւ. և ամենեցուն՝ որք 'ի ժողովրդեանն էին աչք՝ 'ի նա հայէին: 21 * Եւ սկսաւ ասել ցնոսա. այսօր լցան գիրքս այս յականջս ձեր:

22 * Եւ ամենեքին վկայէին նմա. և զարմանային ընդ բանս շնորհաց՝ որք ելանէին 'ի բերանոյ նր. և ասէին, ո՞չ սա է որդին յովսեփայ: 23 * Եւ ասէ ցնոսա. ապաքէն ասիցէք առ իս զառակս զայս. բժիշկ՝ բժշկեա՛ զանձն քո. որչափ լուաք, զոր արարեր 'ի կափառնաում, արա՛ և աստ 'ի քում գաւառի:

24 * Եւ ասէ, ամէն ասեմ ձեզ. թէ չէ՛ մարգարէ ընդունելի 'ի քաղաքի իւրում: 25 * Բայց արդարև ասեմ ձեզ. զի բազում այրիք էին յաւուրս եղիայի 'ի մէջ Իղի, յորժամ փակեցան երկինք զերիս ամս և զվեց ամիս. և եղև սով մեծ ընդ ամենայն երկիր: 26 * ‖ Եւ ո՛չ առ մի 'ի նոցանէ առաքեցաւ եղիա, բայց միայն 'ի սարեփթայ սիդօնացւոց առ կին մի այրի: 27 * ‖ Եւ բազում բորոտք էին յԻղի, առ եղիսէիւ մարգարէիւ: և ոչ ոք 'ի նոցանէ սրբեցաւ, բայց միայն նէեման ասորի:

‖3 Թագ. 17.9.
‖4 Թագ. 5.14.



28 * Եւ լցան ամենեքին բարկութբ 'ի ժողովրդեանն, իբրև լսէին զայս:
29 * Եւ յարուցեալ հանէին զնա արտաքոյ քաղաքին, և ածէին զնա մինչև յարտևան լերինն՝ յորոյ վերայ քաղաքն նց շինեալ էր՝ գահավէժ առնել զնա:
30 * Եւ նա անցեալ ընդ մէջ նց՝ գնայր:
31 * ‖ Եւ էջ 'ի կափառնաում 'ի քաղաքն գալիլեացւոց՝ և ուսուցանէր զնոսա 'ի շաբաթսն: 32 * ‖ Եւ զարմանային ընդ վարդապետութիւն նորա՝ զի իշխանութբ էր բան նորա: 33 * ‖ Եւ էր 'ի ժողովրդեանն այր մի, զոր ունէր այս դիւի պղծոյ. և աղաղակեալ 'ի ձայն մեծ: 34 * Ասէ, թողացո՛. զի՞ կայ մեր և քո՝ Յս նազօրեցի. եկիր կորուսանել զմեզ. գիտեմք զքեզ՝ ով ես սրբդ Այ: 35 * Սաստեաց 'ի նա Յս և ասէ՝ պապանձեա՛ց և ե՛լ 'ի դմանէ. զգետնեաց զնա դևն 'ի միջի անդ. և ել 'ի նմանէ. և ինչ ո՛չ վնասեաց նմա:
36 * Եւ եղեն զարմանալիք 'ի վերայ ամենեցուն. խօսէին ընդ միմեանս և ասէին, զի՞նչ է բանս այս. զի իշխանութբ և զօրութբ սաստէ այսոց պղծոց՝ և ելանեն: 37 * Եւ երթայր հռչակ զնմանէ ընդ ամ տեղիս շուրջ զգաւառաւն:
38 * Եւ յարուցեալ 'ի ժողովրդենէ անտի՝ եմուտ 'ի տուն սիմօնի: ‖ զոքանչ սիմօնի տագնապիւր ջերմամբ մեծաւ. և աղաչէին զնա վասն նորա:
39 * Եկաց առ նմա. սաստեաց ջերմանն, և եթող զնա. և վաղվաղակի յարեաւ, և պաշտէր զնոսա: 40 * Եւ ընդ արևուն մտանել՝ ամենեքեան, որոց էին հիւանդք 'ի պէսպէս ցաւս, բերէին զնս առ նա: Եւ նա իւրաքանչիւր ումեք 'ի նոցանէ դնէր ձեռս՝ և բժշկէր զնս:
41 * ‖ Ելանէին դևք 'ի բազմաց՝ աղաղակէին և ասէին. եթէ դու ես որդի Այ. և նա սաստէր՝ և ո՛չ տայր թոյլ խօսիլ. զի գիտէին զնա թէ Քսն է:
42 * Եւ իբրև տիւ եղև, ել՝ և գնաց յանապատ տեղիս, և ժողովուրդքն խնդրէին զնա. եկին մինչև առ նա՝ և արգելուին զնա՝ զի մի՛ գնասցէ 'ի նոցանէ: 43 * Եւ նա ասէ ցնս. և այլոց քաղաքաց պարտ է ինձ աւետարանել զարքայութիւն Այ. զի յայս իսկ առաքեցայ:
44 * Եւ քարոզէր 'ի ժողովուրդս գալիլեացւոց:

ԲԲ.
‖ Մատ. 4.13.
Մարկ. 1.21.
‖ Մատ. 7.28.
‖ Մարկ. 1.23.
‖ Մատ. 8.14.
Մարկ. 1.30.
‖ Մարկ. 1.34.
ԲԳ.

## ԳԼ: Ե.

1 Եւ եղև 'ի խռնել զնովաւ ժողովրդեանն և լսել զբանն Այ. և ինքն կայր առ ծովակին գեննեսարեթայ: 2 * ‖ Եւ ետես երկուս նաւս՝ զի կային առ ծովակին. և ձկնորսքն ելեալք 'ի

‖ Մատ. 4.18.
Մարկ. 1.16.

'ի նոցանէ՝ լուանային զգործիսն ։
3 * Եւ նա 'ի մի նաւուցն ․ որ էր սիմո-նի ․ և աղաչեաց զնա սակաւիկ մի տանիլ 'ի ներքս 'ի ցամաքէն ։ նստաւ, և ուսուցանէր 'ի նաւէ անտի զժողո-վուրդսն ։ 4 * Եւ իբրև լռեաց 'ի խօ-սիցն, ասէ ցսիմոն՝ խաղացո 'ի խորն, և արկէք զգործիս ձեր յորս ։
5 * Պատասխանի ետ սիմոն և ասէ ցնա․ վարդապետ՝ զամենայն գիշերս աշխատ եղեաք՝ և ոչինչ կալաք ․ բայց վասն քո բանիդ արկցուք զգործիսս։
6 * Զայս իբրև արարին, փակեցին 'ի ներքս՝ բազմութիւն ձկանց յոյժ, մինչև պարպատէին ուռկանք նոցա ։
7 * Եւ ակն արկէին ուսակցացն 'ի միւս նաւուն՝ գալ օգնել նց․ և եկին․ և լցան երկոքին նաւքն մինչև մերձ յընկղմել նոցա։ 8 * Իբրև ետես սիմոն պետրոս՝ անկաւ առ ծունկսն Յի և ասէ ․ 'ի բաց գնա յինէն Տր ․ զի այր մեղաւոր եմ ես ։ 9 * Զի զարհուրեալ էր ընդ նմա և ամենեքեան՝ որք ընդ նմայն էին վս որսոյ ձկանցն՝ զոր ըմբռնեցին ։
10 * Նոյնպէս և զյակոբոս, և զյօհան-նէս՝ որք էին ուսակիցք սիմոնի ։ և ասէ ցսիմոն Յս ․ մի երկնչիր՝ յայսմ հետէ զմարդիկ որսայցես 'ի կեանս ։
11 * Եւ հանեալ զնաւսն 'ի ցամաք՝ թողին զամենայն՝ և գնացին զհետ նորա։

Բ.Գ.
12 * Եւ եղև 'ի հասանելն նր 'ի մի քա-ղաքաց, և ահա այր մի լի բորոտութը՝ իբրև ետես զՅս , անկեալ 'ի վերայ երեսաց աղաչեաց զնա՝ և ասէ ․ Տր՝ եթէ կամիս , կարող ես զիս սրբել ։
Մատթ. 8. 2. Մարկ. 1.40.
13 * Զգեաց զձեռն իւր՝ հասոյց 'ի նա և ասէ ․ կամիմ, սրբեաց ․ և վաղվա-ղակի գնաց 'ի նմանէ բորոտութիւն ։
14 * Եւ նա պատուիրեաց նմա մի ումեք ասել ․ այլ թէ երթ , ցոյց զանձն քո քահանային ․ և մատո զպատարագ վս սրբութե քոյ՝ որպէս և հրամայեաց մովսէս 'ի վկայութիւն նոցա ։
Ղեւտ. 14. 4.
15 * Եւ յորդէր առաւել բանն զնմանէ ․ և ժողովէին ժողովուրդք բազումք լսել՝ և բժշկիլ 'ի հիւանդութեէ իւր-եանց ։ 16 * Եւ նա խոյս տայր յանա-պատ տեղիս ․ և կայր յաղօթս ։

Բ.Ե.
17 * Եւ եղև 'ի միում աւուրց ․ և ինքն ուսուցանէր ։ և փարիսեցիքն , և օրի-նացն վարդապետք նստէին ․ որք ժո-ղովեալ էին յամենայն քաղաքաց գա-լիլեացւոց ․ և հրէաստանի՝ և երէմի ․ և զօրութի Տն էր 'ի բժշկել զնոսա ։
18 * Եւ ահա արք բերէին մահճօք զայր մի, որ էր անդամալոյծ ․ և խնդրէին զնա մուծանել 'ի ներքս, և դնել ա-ռաջի նորա ։
Մատթ. 9. 2. Մարկ. 2. 3.



19 * Եւ իբրև ոչ գտանէին, թէ ընդ որ մուծանիցեն զնա 'ի ներքս վասն ամ-բոխին , ելին 'ի տանիս՝ և 'ի ցռուցն կախեցին զնա ․ և իջուցին մահճօքն հանդերձ 'ի մէջ առաջի Յի ։
20 * Եւ տեսեալ զհաւատսն նոցա՝ ասէ ցնա ․ այր դու՝ թողեալ լիցին քեզ 21 մեղք քո ։ * Սկսան խորհիլ դպիրքն և փարիսեցիքն, և ասեն ։ ո՞ է սա՝ որ խօսի զհայհոյութիւս , ո՞վ կարէ թո-ղուլ զմեղս , բայց միայն Ած ։
22 * Իբրև գիտաց Յս զխորհուրդս նց, պատասխանի ետ և ասէ ցնս ․ զի՞ խոր-23 հիք 'ի սիրտս ձեր ։ * Զի՞նչ դիւրա-գոյն է ասել․ թողեալ լիցին քեզ մեղք քո՝ եթէ ասել, արի, և գնա։
24 * Այլ զի գիտասջիք թէ իշխանութի ունի որդի մարդոյ յերկրի թողուլ զմեղս ( ասէ ցանդամալոյծն ).քեզ ա-սեմ ․ արի , առ զմահիճս քո՝ և երթ 25 'ի տուն քո ։ * Եւ առժամայն յարու-ցեալ առաջի ամենեցուն՝ եառ զիւր՝ յորոյ վերայ անկեալ դնիւր ․ գնաց 'ի տուն իւր ․ և փառաւոր առնէր զԱծ ։
26 * Զարմանք կալաւ զամենեսեան ․ և փառաւոր առնէին զԱծ․լի եղեն ահիւ և ասեն , թէ տեսաք այսօր նոր նշանս ։
Բ.Զ. Մատթ. 9. 9. Մարկ. 2. 14.
27 * Եւ յետ այնորիկ ել անտի՝ և ետես զմաքսաւոր մի՝ որում անուն էր ղևի ․ զի նստէր 'ի մաքսաւորութե ․ և ասէ 28 ցնա ․ եկ զկնի իմ ։ * Եւ թողեալ զամ, յարեաւ և գնաց զկնի նորա ։

* Եւ

29 *Եւ արար ընդունելութիւն մեծ նմա Ղեւի 'ի տան իւրում. եւ էր ժողովուրդ բազում մաքսաւորաց՝ եւ այլոց՝ որք էին բազմեալք ընդ նոսա։

(Մարկ. 2.16.) 30 *Եւ տրտնջէին փարիսեցիքն եւ դպիրքն նց զնմանէ առ աշակերտսն նր՝ եւ ասէին. ընդէ՞ր ընդ մաքսաւորս եւ ընդ մեղաւորս ուտէք եւ ըմպէք։

31 *Պատասխանի ետ Յս եւ ասէ ցնոսա. ոչ ինչ են պիտոյ բժիշկք ողջոց՝ այլ հիւանդաց։ 32 *Եւ ոչ եկի կոչել զարդարս՝ այլ զմեղաւորս յապաշխարութիւն։

(Մարկ. 2. 18.) 33 *Եւ նոքա ասեն ցնա՝ ընդէ՞ր աշակերտքն յոհաննու պահեն սաստ՝ եւ խնդրուածս առնեն. նոյնպէս եւ փարիսեցւոցն. եւ քոյդ ուտեն, եւ ըմպեն։

34 *Եւ նա ասէ ցնոսա. միթէ կարո՞ղ էք մանկանց առագաստի, մինչ փեսայն ընդ նոսա իցէ, հրաման տալ պահել։ 35 *Եկեսցեն աւուրք՝ յորժամ բարձցի 'ի նոցանէ փեսայն, ապա պահեսցեն յաւուրսն յայնոսիկ։ 36 *Ասաց եւ առակ մի առ նոսա. թէ ոչ ոք արկանէ 'ի նոր հանդերձէ 'ի վերայ հնացեալ ձորձոյ. ապա թէ ոչ՝ եւ զնորն պատառէ եւ ոչ հնոյն չմիաբանի կապերտն՝ որ 'ի նորոյն։ 37 *Եւ ոչ ոք արկանէ գինի նոր 'ի տիկս հինս. ապա թէ ոչ՝ պայթուցանէ գինին նոր զտիկսն հինս. ինքն հեղանի, եւ տիկքն կորնչին։

38 *Այլ գինի նոր 'ի տիկս նորս արկանել է. եւ երկոքին պահին։ 39 *Եւ ոչ ոք ըմպէ զհինն, եւ կամիցի զնորն. քանզի ասէ՝ թէ հինն քաղցրագոյն է։

## ԳԼ. Զ.

(ԲԼ.) (Մատթ. 12. 1. Մարկ. 2.23.)

1 Եւ եղեւ 'ի շաբաթու երկրորդում առաջնոյն, անցանել նմա ընդ արտորայսն. եւ աշակերտքն նորա կորզէին հասկ՝ շփէին ընդ ափ՝ եւ ուտէին։ 2 *Եւ ոմանք 'ի փարիսեցւոցն ասեն ցնոսա. զի՞նչ գործէք՝ զոր չէ օրէն 'ի շաբաթու։ 3 *Պատասխանի ետ նոցա Յս եւ ասէ. չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ զոր արարն դաւիթ, յորժամ քաղցեաւ ինքն՝ եւ որք ընդ նմայն էին։

(Ա Թագ. 21. 6.) 4 *Զիա՞րդ եմուտ նա 'ի տունն Այ՝ եւ զհացն զառաջաւորութեան եկեր. եւ ետ այնոցիկ՝ որք ընդ նմայն էին. զոր (Ղեւտ. 29. 32.) ոչ էր օրէն ուտէք ուտել, բայց միայն քահանայապետին։ 5 *Եւ ասէ ցնս. (Գ Թագ. 24. 9.) Տր է որդի մարդոյ եւ շաբաթու։

6 *Եւ եղեւ 'ի միւսում շաբաթուն մտանել նմա 'ի ժողովուրդն՝ եւ ուսուցանել. (Մատթ. 12. 10.) եւ էր անդ այր մի՝ որոյ ձեռն աջ գօսացեալ էր։ 7 *Եւ սպասէին նմա (Մարկ. 3. 1.) դպիրքն եւ փարիսեցիք՝ թէ 'ի շաբաթուն բժշկիցէ՝ զի գտանիցեն չարախօսութիւն զնմանէ։ 8 *Եւ նա գիտէր զխորհուրդս նոցա. ասէ ցայրն՝ որոյ ձեռն գօսացեալ էր. արի, եւ կաց 'ի մէջ տեղւոջ մէջ. եւ նա յարուցեալ եկաց։

9 *Ասէ ցնոսա Յս. հարցից ինչ ձեզ. զի՞նչ արժան է 'ի շաբաթու. բարի՞ ինչ առնել՝ եթէ չար գործել. ոգի միապ րեցուցանել՝ եթէ կորուսանել։

10 *Եւ հայեցեալ շուրջ զամենեքումբք զայրագին, ասէ ցնա՝ ձգեա՛ զձեռն քո. եւ նա ձգեաց. եւ հաստատեցաւ ձեռն 11 նորա իբրեւ զմիւսն։ *Եւ նոքա լցան յիմարութբ. եւ խօսէին ընդ միմեանս, թէ զի՞նչ առնիցեն Յի։

(ԳԿ)

12 *Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել 'ի լեառն կալ յաղօթս, եւ հանէր զգիշերն 'ի գլուխ յաղօթսն այ։

(Մատթ. 10. 1. Մարկ. 3. 13.) 13 *Եւ իբրեւ այգ եղեւ՝ կոչեաց զաշակերտսն իւր՝ եւ ընտրեաց 'ի նոցանէ երկոտասանս. (զորս եւ առաքեալս անուանեաց։) 14 *Զսիմոն՝ զոր եւ պետրոս անուանեաց. եւ զԱնդրեաս զեղբայր նորին. եւ զՅակոբոս. եւ զՅոհաննէս. եւ զՓիլիպպոս. եւ զԲարթողիմէոս։ 15 *Եւ զՄատթէոս. եւ զԹովմաս. եւ զՅակոբոս ալփեայ. եւ զՍիմոն զկոչեցեալն նախանձայոյզ։ 16 *Եւ զՅուդա Յակոբայ. եւ զՅուդա իսկարիովտացի, 17 որ եղեւ իսկ մատնիչ։ *Եւ իջեալ նոքօք հանդերձ 'ի տեղի մի տափարակ. եւ ժողով աշակերտացն նր՝ եւ բազմութիւն յոյժ ժողովրդեանն. յամ հրէաստանէ եւ յեէմէ՝ եւ յայնմ կողմանէ՝ եւ 'ի ծովեզերէն տիւրոսի եւ սիդոնի։

18 *Որք եկին լսել 'ի նմանէ՝ եւ բժշկիլ 'ի հիւանդութէ իւրեանց. եւ նեղեալքն 19 յայսոց պղծոց՝ բժշկէին։ *Եւ ժողովուրդն խնդրէր մերձենալ 'ի նա. զի զօրութիւն բազում ելանէր 'ի նմանէ՝ 20 եւ բժշկէր զամենեսին։ *Եւ նա ամբարձ զաչս իւր յաշակերտսն իւր եւ ասէ. Երանի է աղքատաց հոգւով. զի ձեր է արքայութիւն Այ։ (Մատթ. 5. 2.)

21 *Երանի է՝ որք քաղցեալք են այժմ, զի յագեսցին. Երանի՝ որք լան այժմ, 22 զի ծիծաղեսցին։ *Երանի է ձեզ յորժամ նախատիցեն զձեզ մարդիկ՝ եւ յորժամ որոշիցեն եւ նախատիցեն զձեզ. եւ հանիցեն անուն չար զձէնջ 23 վն որդւոյ մարդոյ։ *Ուրախ լինիջիք յաւուր յայնմիկ եւ ցնծասջիք. զի ահա վարձք ձեր բազումք են յերկինս. ըստ դմին օրինակի առնէին մարգարէիցն 24 հարցն իւրեանց։ *Բայց վա՜յ ձեզ մեծատանցդ՝ զի ընկալայք զմխիթարութի ձեր։ (Մատթ. 5. 11.) 25 *Վա՜յ ձեզ՝ որք յագեալքդ էք այժմ, զի քաղցիցէք. վա՜յ ձեզ՝ որք ծիծաղիքդ այժմ, զի սգայցէք՝ եւ լայցէք։ (Երեմ. 31.8. Եկլեզ. 6. 1. Եսայ. 65.13.)

ցէք։ 26 *Վա՜յ ձեզ՝ յորժամ բարի ասիցեն զձէնջ ամենայն մարդիկ. զի այդպէս առնէին սուտ մարգարէիցն հարքն նոցա։

27 *Այլ ձեզ ասեմ՝ որք լսէքդ. սիրեցէք զթշնամիս ձեր. բարի արարէք ատելեաց ձերոց։

28 *Օրհնեցէք զանիծիչս ձեր. աղօթս արարէք ՚ի վերայ նեղչաց ձերոց։

29 *Որ հարկանէ զծնօտ քո՝ մատո նմա և զմիւսն. և որ հանէ ՚ի քէն զբաճկոն քո՝ մի՛ արգելուր ՚ի նմանէ և զշապիկս։

30 *Ամենայն, որ խնդրէ ոք ՚ի քէն, տո՛ւր. և զորինչ հանէ ոք ՚ի քէն, մի՛ պահանջեր։

31 *Եւ որպէս կամիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արասջիք և դուք նոցա։

32 *Եթէ սիրէք դուք զսիրելիս ձեր՝ զի՞նչ շնորհ է ձեր. զի և մեղաւորք սիրեն զսիրելիս իւրեանց։

33 *Եւ եթէ բարի առնէք բարերարաց ձերոց՝ ո՞ր շնորհ է ձեր. զի և մեղաւորք զնոյն գործեն։

34 *Եւ եթէ տայք փոխ այնոցիկ՝ յորոց ակն ունիցիք առնուլ՝ ո՞ր շնորհ է ձեր. քանզի և մեղաւորք մեղաւորաց փոխ տան. զի առցեն անդրէն զկշիռն։

35 *Բայց սիրեցէք զթշնամիս ձեր. և բարի արարէք ատելեաց ձերոց. և տո՛ւք փոխ՝ ուստի ոչ ակն ունիցիք առնուլ. և եղիցին վարձք ձեր բազումք՝ և եղիջիք որդիք բարձրելոյ. զի նա քաղցր է ՚ի վերայ չարաց՝ և ապաշնորհաց։

36 *Եղերո՛ւք գթածք՝ որպէս և հայրն ձեր գթած է։



37 *Մի՛ դատէք՝ և ոչ դատիցիք. մի՛ պատժէք՝ և ոչ պատժիցիք. արձակեցէք, և արձակիցիք։

38 *Տո՛ւք, և տացի ձեզ. չափ բարւոք՝ թաթաղուն, շարժուն, զեղուն, տացեն ՚ի գոգս ձեր. նովին չափով որով չափէք, չափեսցի ձեզ։

39 *Ասաց և առակ մի առ նոսա՝ միթէ կարիցէ՞ կոյր կուրի առաջնորդել. ո՞չ ապաքէն երկոքին ՚ի խորխորատ անկանիցին։

40 *Ո՛չ է աշակերտ լաւ քան զվարդապետ իւր. ամ կատարեալն եղիցի իբրև զվարդապետ իւր։

41 *Զի՞ տեսանես զշիւղ յական եղբօր քոյ. և ՚ի քում ական զգերանդ ո՛չ նշմարես։

42 *Կամ զիա՞րդ կարես ասել ցեղբայր քո. եղբայր, թո՛ղ հանից զշիւղդ յականէ քումմէ. և դու ՚ի քում ական զգերանդ ոչ տեսանես. կեղծաւոր՝ հա՛ն նախ զգերանդ յականէ քումմէ. և ապա հայեսջիր հանել զշիւղ յականէ եղբօր քոյ։

43 *Զի ոչ է ծառ բարի՝ որ առնէ պտուղ չար. և ոչ դարձեալ ծառ չար՝ որ առնիցէ զպտուղ բարի։

44 *Զի իւրաքանչիւր ծառ ՚ի պտղոյ իւրմէ ճանաչի. զի ոչ եթէ ՚ի փշոց քաղեն թուզ. և ոչ ՚ի մորենւոյ կթեն խաղող։

45 *Մարդ բարի, ՚ի բարի գանձուց սրտի իւրոյ բղխէ զբարի. և մարդ չար՝ ՚ի չարէն բղխէ զչար. քանզի ՚ի յաւելուածոց սրտին խօսի բերան նորա։

46 *Զի՞ կոչէք զիս՝ Տէ՛ր Տէ՛ր, և զոր ասեմս, ոչ առնէք։

47 *Ամենայն որ գայ առ իս, և լսէ զբանս իմ, և առնէ զնո՛յն, ցուցից ձեզ ում նմանէ։

48 *Նման է առն, որ շինիցէ տուն. որ փորեաց՝ և խորեաց՝ և եդ զհիմն ՚ի վերայ վիմի. ՚ի յառնել հեղեղաց բաղխեաց գետ զտունն. և ոչ կարաց շարժել զնա. զի հաստատեալ էր հիմն ՚ի վերայ վիմի։

49 *Իսկ որ լսէ զբանս իմ և ոչ առնէ՝ նմանէ առն՝ որ շինիցէ զտուն ՚ի վե՛ր հողոյ առանց հիման. զոր բաղխեաց գետ. և վաղվաղակի անկաւ. և եղև կործանումն տանն այնորիկ մեծ։

## Գլ: Է։

1 Եւ եղև իբրև կատարեաց զամ զբանս իւր ՚ի լսելիս ժողովրդեանն, եմուտ ՚ի կափառնաում։

2 *Հարիւրապետի ուրումն ծառայ չարաչար հիւանդացեալ մերձ էր ՚ի վախճանել. որ էր նմա պատուական։

3 *Եւ իբրև լուաւ զՅն, առաքեաց զծերս հրէից. աղաչէր զնա, զի եկեսցէ, և ապրեցուսցէ զծառայն նորա։

4 *Եւ նոքա եկեալ առ Յն՝ աղաչէին զնա ստէպ և ասէին. թէ արժանի է՝

որում

ուրում զշնորհս զայս առնես ։ * Զի 5
սիրէ զազգս մեր . և զժողովրդանոցն
նա շինեաց մեզ ։ * Եւ Յս գնաց ընդ 6
նոսա ։ Իբրև ոչինչ կարի հեռի էր 'ի
տանէն, յղեաց առ նա հարիւրապետն
բարեկամս, և ասէ ցնա . ‖ Տր, մի ինչ
աշխատ լինիր՝ զի չեմ բաւական եթէ
ընդ յարկաւ իմով մտանիցես ։

‖ Մատ. 8. 8.

* Վս որոյ և ոչ զանձն համարեցայ ար 7
ժանի՝ առ քեզ գալոյ ։ այլ ասա՛ բանի՛,
և բժշկեսցի մանուկս իմ ։ * Քանզի 8
և ես այր մի եմ կարգեալ ընդ իշխա_
նութբ ։ ունիմ ընդ ինև զինուորս ։ և
ասեմ սմա՝ երթ, և երթայ ։ և այլում՝
թէ եկ, և գայ ։ և ծառայի իմում թէ
արա՛ զայս, և առնէ ։ * Եւ իբրև լուաւ 9
զայս Յս՝ զարմացաւ . դարձաւ առ
ժողովուրդն՝ որ երթային զհետ նր՝
և ասէ . ամէն ասեմ ձեզ՝ թէ և ո՛չ
յիլի այսչափ հաւատս գտի ։
* Եւ դարձան անդրէն պատգամաւ 10
որքն 'ի տունն . և գտին զծառայն հի_
ւանդ՝ բժշկեալ ։

Գ.Գ.

* Եւ եղև 'ի վաղիւն, երթայր 'ի քա_ 11
ղաք մի, որում անուն էր Նային . եր_
թային ընդ նմա աշակերտքն նորա՝
և ժողովուրդք բազումք ։



* Իբրև մերձ եղև 'ի դուռն քաղաքին, 12
և ահա ելանէր մեռեալ մի որդի միա_
մօր մօր իւրոյ ։ և նա էր այրի ։ և ժողո
վուրդ բազում քաղաքին էր ընդ նմա ։
Ձին

13 * Իբրև ետես զնա Տր, գթացաւ 'ի նա՛
14 և ասէ . մի՛ լար ։ * Եւ մատուցեալ մերձե
ցաւ 'ի դագաղն ։ և որք բարձեալն տա
նէին, զտեղի առին ։ և ասէ . պատանի
15 դու՝ քեզ ասեմ, արի՛ ։ * Կանգնեցաւ՝
և նստաւ մեռեալն . և սկսաւ խօսել ։ և
16 ետ զնա ցմայր իւր ։ * Եւ ահ կալաւ
զամենեսին . և փառաւոր առնէին զԱծ
և ասէին ։ ‖ մարգարէ ոմն մեծ յարու_
ցեալ է 'ի միջի մերում . և թէ այց ա_
րար Ած ժողովրդեան իւրում 'ի բա_
17 րութիւն ։ * Եւ ել զրոյցս այս ընդ ամ
հրէաստան վս նր . և ընդ ամ կողմանս
18 աշխարհին ։ * Եւ պատմեցին յովհան_
նու աշակերտքն իւր վս ամի այսորիկ ։
19 * ‖ Եւ կոչեաց առ ինքն երկուս ոմանս
յաշակերտացն իւրոց յովհաննէս . առա
քեաց առ Տր և ասէ . դո՛ւ ես, որ գա_
լոցն ես, եթէ այլում ակն կալցուք ։
20 * Եւ եկեալ արքն առ նա՝ ասեն ։ յո_
հաննէս մկրտիչ առաքեաց զմեզ առ
քեզ՝ և ասէ ։ դո՛ւ ես որ գալոցն ես,
21 թէ այլում ակն կալցուք ։ * Եւ 'ի նմին
ժամու բժշկեաց զբազումս 'ի հիւան_
դութեանց և 'ի հարուածոց և յայսոց չա
րաց ։ և կուրաց բազմաց շնորհեաց տե
22 սանել ։ * Պատասխանի ետ նց և ասէ ։
երթա՛յք, պատմեցէք յովհաննու՝ զոր
տեսիք և լուայք ։ ‖ զի կոյրք տեսա_
նեն . կաղք գնան ։ բորոտք սրբին ։
խուլք լսեն ։ մեռեալք յառնեն ։ աղ_
23 քատք աւետարանին . * Եւ երանի
իցէ որ ոչ գայթագղեսցի յիս ։
24 * Եւ իբրև գնացին աշակերտքն յո_
հաննու՝ սկսաւ ասել ընդ ժողովուրդն
վասն յովհաննու ։ զի՞ ելիք յանապատն
տեսանել . եղէգն շարժուն 'ի հողմոյ ։
25 * Այլ զի՞նչ ելիք տեսանել . զայր 'ի
հանդերձս փափկութեան զարդարեալ ։
ահաւասիկ որք 'ի հանդերձս երևելիս
և 'ի փափկութեան են՝ յարքունիս են ։
26 * Այլ զի՞նչ ելիք տեսանել . զմարգա_
րէ՞ ։ այո՛ . ասեմ ձեզ՝ առաւել ևս քան
27 զմարգարէ ։ * ‖ Զի սա՛ է վասն որոյ
գրեալն է ։ թէ ահա առաքեմ զհրեշ
տակ իմ առաջի քո՝ որ յարդարեսցէ
զճանապարհս քո առաջի քո ։
28 * Ասեմ ձեզ ։ մեծ 'ի ծնունդս
կանանց մարգարէ քան զյովհաննէս ոչ
ո՛ք է ։ բայց փոքրիկն յարքայութեան Այ
29 մեծ է քան զնա ։ * Եւ ամ ժողովուրդն
իբրև լուաւ, և մաքսաւորքն արդա_
րացուցին զԱծ . զի մկրտեցան 'ի մկր_
30 տութիւն յովհաննու ։ * Իսկ փարիսե_
ցիքն և օրինականք զխորհուրդն Այ
անարգեցին յանձինս իւրեանց՝ զի ո՛չ
31 մկրտեցան 'ի նմանէ ։ * ‖ Արդ՝ ո՞ւմ
նմանեցուցից զմարդիկ ազգիս այսո_
Kkkkkk րիկ ։

‖ Մար. 24. 19.
Յովհ. 4. 19.
‖ Մատ. 11. 2.
‖ Եսայ. 35. 5.
‖ Մաղ. 3. 1.
Մատ. 11. 10.
Մարկ. 1. 2.
‖ Մատ. 11. 16.

րիկ․ և ումն իցեն նմանօղք։ *Նմանք են մանկտւոյ՝ որք ՚ի հրապարակս նստին․ կարդայցեն զմիմեանս և ասիցեն․ փողս հարաք ձեզ՝ և ո՛չ կաքաւեցիք․ ողբացաք՝ և ո՛չ լացիք։ 32

‖ Մատթ. 3. 4. Մարկ. 1. 6.

33 *‖Եկն Յովհաննէս մկրտիչ՝ ո՛չ ուտէր զհաց․ և ո՛չ ըմպէր զգինի․ և ասէիք՝ դև գոյ ՚ի նմա։ 34 *Եկն որդի մարդոյ՝ ուտէ և ըմպէ, և ասէք, ահա այր կերող և արբեցող․ բարեկամ մաքսաւորաց և մեղաւորաց։ 35 *Եւ արդարացաւ իմաստութիւն յորդւոց իւրոց։

Գ. Գ.

36 *Աղաչէր զնա ոմն ՚ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ հաց ընդ նմա։ և մտեալ ՚ի տուն փարիսեցւոյն՝ բազմեցաւ։

‖ Մատթ. 26. 7. Մարկ. 14. 3. Յովհ. 12. 3.

37 *‖Եւ կին մի էր ՚ի քաղաքին մեղաւոր։ իբրև գիտաց եթէ բազմեալ է ՚ի տան փարիսեցւոյն, բերեալ շիշ մի իւղոյ նարդեան ազնուի։ 38 *Կայր յետոյ առ ոտս նորա, լայր․ և արտասուօքն սկսաւ թանալ զոտս նորա։ և հերով գլխոյ իւրոյ ջնջէր։ և համբուրէր զոտսն․ և օծանէր իւղովն։



39 *Իբրև տեսեալ փարիսեցւոյն՝ որ կոչեաց զնա՝ ասէ ընդ միտս իւր․ սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ո՛վ և որպիսի ոք կին մերձենայ ՚ի սա․ զի մեղաւոր է։ 40 *Պատասխանի ետ Յս և ասէ․ սիմօն, ունիմ ինչ ասել քեզ․ և նա ասէ՝ ասա՛ վարդապետ։ և ասէ։ 41 *Երկու պարտապանք էին ուրուք փոխատուի․ միոյն պարտիւր հինգ հարիւր դահեկան․ և միւսն յիսուն։ 42 *Եւ իբրև ո՛չ գոյր հատուցանել՝ երկոցունց շնորհեաց։ արդ ասա՛ ո՛վ առաւել սիրեսցէ զնա։ 43 *Ասէ սիմօն, ինձ այսպէս թուի, թէ որում զբազումն շնորհեաց։ և նա ասէ ցնա․ ուղիղ դատեցար։ 44 *Եւ դարձեալ ՚ի կինն կողմն, ասէ ցսիմօն․ տեսանես զայս կին։ մտի ՚ի տուն քո․ ջուր ոտից իմոց ո՛չ ետուր․ իսկ սա արտասուօք իւրովք եթաց զոտս իմ, և հերով իւրով ջնջեաց։ 45 *Համբոյր մի դու ո՛չ ետուր ինձ․ սա ուստի յորմէ հետէ մտեալ եմ, ո՛չ դադարեաց ՚ի համբուրելոյ զոտս իմ։ 46 *Իւղով զգլուխ իմ ո՛չ օծեր․ սա իւղով անուշիւ եօծ։ 47 *Վասն որոյ ասեմ քեզ․ թողեալ լիցին սմա մեղք իւր բազում, զի յոյժ սիրեաց։ զի որում շատ թողուցու, շատ սիրէ՝ և որում սակաւ, սակաւ։ 48 *Եւ ասէ ցնա․ ‖թողեալ լիցին քեզ մեղք քո։

‖ Մատթ. 9. 2.

49 *Եւ սկսան՝ որք բազմեալն էին ընդ նմա, ասել ընդ միտս իւրեանց։ ո՞վ է սա՝ որ զմեղս թողու։ 50 *Եւ նա ասէ ցկինն․ հաւատք քո կեցուցին զքեզ՝ երթ ՚ի խաղաղութիւն։

## ԳԼ. Ը.

Գլ.

1 Եւ եղև յետ այնորիկ և ինքն շրջէր ընդ քաղաքս և ընդ գիւղս․ քարոզէր և աւետարանէր զարքայութիւն այ։ և երկոտասանքն ընդ նմա։ 2 *Եւ կանայք ոմանք՝ որք բժշկեալ էին յայսոց չարաց և ՚ի հիւանդութեանց։ ‖մարիամ, որ կոչիւր մագդաղենացի․ յորմէ եօթն դևքն ելեալ էին։

‖ Մարկ. 16. 9.

3 *Եւ յովհաննա կին քուզայ՝ հազարապետին հերովդի, և շուշան՝ և այլք բազումք․ որք պաշտէին զնա յընչից իւրեանց։ 4 *Եւ ՚ի ժողովել բազմաց ժողովրդոց։ և ըստ քաղաքաց քաղաքաց եկելոց առ նա, ասէ առակաւ։

‖ Մատթ. 13. 4. Մարկ. 4. 3.

5 *‖Ել սերմանացան սերմանել զսերմանս իւր։ և ՚ի սերմանելն իւրում՝ էր, որ անկաւ առ ճանապարհաւ․ և եղև կոխան․ և թռչունք երկնից կերին զնա։ 6 *Եւ այլն անկաւ յապառաժի․ և ընդ բուսանիլն՝ չորացաւ, առ ՚ի չգոյէ հիւթոյ։ 7 *Եւ այլն անկաւ ՚ի մէջ փշոց․ և ընդ նմին բուսեալ փշոցն՝ հեղձուցին զնա։ 8 *Եւ այլն անկաւ յերկիր բարի և պարարտ․ և բուսեալ՝ արար զպտուղ հարիւրապատիկ։ զայս իբրև խօսեցաւ, ասէ․ որ ունիցի ականջս լսելոյ, լուիցէ։ 9 *Հարցանէին զնա աշակերտքն, թէ զինչ իցէ առակն։ 10 *Եւ նա ասէ․ ձեզ տուեալ է գիտել զխորհուրդս արքայութեան Այ․ բայց

այլոց

Նոցա այլոց առակօք. զի տեսցեն, եւ մի՛ տեսցեն. եւ լուիցեն, եւ մի՛ իմասցին:

11 Բայց առակն այս ինչ է. սերմն բանն Այ է:
12 Եւ որք առ ճանապարհաւն, այնոքիկ են, որք լսեն. եւ ապա գայ սատանայ՝ եւ հանէ զբանն 'ի սրտից նոցա. զի մի՛ հաւատասցեն՝ եւ ապրեսցին:
13 Եւ որք յապառաժին, որք յորժամ լսիցեն՝ խնդութբ ընդունին զբանն. եւ արմատս ոչ ունին. որք առ ժամանակ մի հաւատան. եւ 'ի ժամանակի փորձութե հեռանան:
14 Իսկ որ 'ի մէջ փշոցն անկաւ, նոքա են, որք իբրեւ լսեն զբանն, եւ 'ի հոգս եւ 'ի մեծութի եւ 'ի ցանկութիւն աշխարհիս զբաղեալ հեղձնուն՝ եւ անպտուղ լինին:
15 Իսկ որ յերկիրն պարարտ. որոց բարւոք եւ զուարթագին սրտիւ լուեալ զբանն՝ ընդունին. եւ տան զպտուղ համբերութբ:
16 Ո՛չ ոք լուցանէ զճրագ եւ թաքուցանէ ընդ կարասաւ, կամ դնէ ընդ մահճօք. այլ 'ի վերայ աշտանակի դնէ. զի որք մտանեն, զլոյս տեսցեն:
17 Զի ոչ ինչ ծածուկ՝ որ ոչ յայտ լիցի. եւ ոչ գաղտնի, որ ոչ ծանիցի, եւ եկեսցէ 'ի յայտ:
18 Տեսէ՛ք այսուհետեւ՝ զիարդ լսէք. զի որ ունիցի՝ տացի նմա. եւ որ ոչն ունիցի, եւ զոր կարծէն թէ ունիցի՝ բարձցի 'ի նմանէ:
19 Եկին առ նա մայրն եւ եղբարք իւր, եւ ոչ կարէին հասանել 'ի նա վասն բազմութեան:
20 Եւ ազդ եղեւ նմա եւ ասեն. մայր քո եւ եղբարք քո կան արտաքոյ՝ եւ կամին զքեզ տեսանել:
21 Եւ ասէ ցնոսա. մայր իմ եւ եղբարք իմ՝ սոքա են, որք զբանն Այ լսեն եւ առնեն:
22 Եւ եղեւ 'ի միում աւուրց՝ ինքն ել 'ի նաւ, եւ աշակերտքն նորա. եւ ասէ ցնոսա. եկա՛յք, անցցուք յայնկոյս ծովակիս. եւ գնացին:
23 Եւ մինչդեռ նաւէին, 'ի քուն եմուտ. եւ էջ մրրիկ հողմոյ 'ի ծովակն՝ եւ ուռնոյր. եւ տագնապէին:
24 Մատուցեալ զարթուցին զնա եւ ասեն. վա՛րդապետ, վա՛րդապետ, կորնչիմք աւասիկ. եւ նա յարուցեալ՝ սաստեաց հողմոյն եւ խռովութե ջուրցն՝ եւ հանդարտեցան. եւ եղեւ խաղաղութի:
25 Ասէ ցնոսա. ո՞ւր են հաւատք ձեր. եւ զահի հարեալ զարմացան. եւ ասէին ցմիմեանս. ո՞վ արդեօք իցէ սա, զի եւ հողմոց եւ ջրոց զհրաման տայ. եւ հնազանդին սմա:
26 Եւ նաւեցին իջին յաշխարհն Գերգեսացւոց. որ է յայնկոյս հանդէպ Գալիլեայ:
27 Եւ ընդ ելանելն նորա 'ի ցամաք, պատահեաց այր մի 'ի քաղաքէն՝ յորում էին դեւք. եւ բազում ժամանակս չէր հանդերձ զգեցեալ՝ եւ ոչ 'ի տան բնակեալ. այլ 'ի գերեզմանս:
28 Եւ տեսեալ զՅս, աղաղակեաց՝ եւ անկաւ առաջի նր՝ եւ ասէ մեծաձայն. զի՞ կայ իմ եւ քո Յս որդի Այ բարձրելոյ. աղաչեմ զքեզ՝ մի՛ տանջեր զիս:
29 Քանզի հրաման տայր այսոյն պղծոյ ելանել 'ի մարդոյ անտի. քանզի բազում ժամանակս յափշտակեալ էր զնա. եւ կապէր 'ի շղթայս. եւ պահէր յերկաթս. եւ խզէր զկապանսն, եւ վարէր 'ի դիւէն յանապատս:
30 Եհարց զնա Յս եւ ասէ. զի՞նչ անուն է քեզ: Եւ նա ասէ. լեգէոն. զի դեւք բազումք մտեալ էին 'ի նա:
31 Եւ աղաչէին զնա՝ զի մի՛ հրաման տացէ նոցա երթալ յանդունդս:
32 Եւ էր անդ երամակ մի խոզից բազմաց արօտական 'ի լերինն. եւ աղաչէին զնա. զի հրաման տացէ նոցա մտանել 'ի նոսա: Եւ հրամայեաց նոցա:
33 Եւ ելեալ դեւքն յառնէն՝ մտին 'ի խոզեանսն. եւ դիմեաց երամակն 'ի դարհէ անտի 'ի ծովակն. եւ հեղձաւ:
34 Իբրեւ տեսին խոզարածքն զիրսն, որ եղեն, փախեան. եւ պատմեցին 'ի քաղաքին եւ յագարակսն:
35 Եւ իբրեւ ելին տեսանել զգործսն. եւ եկին առ Յս. եւ գտին զայրն, ուստի դեւքն ելեալ էին, զգեցեալ եւ զգաստացեալ նստէր առ ոտսն Յի եւ երկեան:
36 Պատմեցին նոցա՝ որոց տեսեալն էր. թէ զիարդ փրկեցաւ դիւահարն:
37 Եւ աղաչէր զնա ամ բազմութիւնն շուրջ զկողմամբքն Գերգեսացւոց. գնալ 'ի սահմանաց նց. քանզի ահիւ մեծաւ տագնապէին: Եւ նա մտեալ 'ի նաւ՝ դարձաւ անդրէն:
38 Աղաչէր զնա այրն, ուստի դեւքն ելեալ էին՝ շրջել ընդ նմա. արձակեաց զնա եւ ասէ:
39 Դա՛րձ 'ի տուն քո, եւ պատմեա՛, զոր միանգամ արար քեզ Ած. գնաց 'ի քաղաքն եւ քարոզէր, զոր ինչ արար նմա Յս:
40 Եւ իբրեւ դարձաւ անդրէն Յս, ընկալաւ զնա ժողովուրդն. քանզի ամենեքեան ակն ունէին նմա:
41 Եւ ահա եկն այր մի, որոյ անուն էր Յայրոս. եւ նա էր իշխան ժողովրդեանն. անկեալ առ ոտսն Յի աղաչէր զնա մտանել 'ի տուն նորա:
42 Զի դուստր միամօր էր նր. ամաց իբրեւ երկոտասանից. եւ էր մերձ 'ի մահ. եւ ընդ երթալն նր՝ ժողովուրդքն նեղէին զնա:
43 Եւ կին մի էր 'ի տեռատեսութե արեան յամաց երկոտասանից. որ 'ի բժիշկս ծախեալ էր զամ ինչս իւր. որում ոչ էր լեալ հնար յումեքէ բժշկել:
44 Մատուցեալ յետոյ՝

մերձեցաւ 'ի դրօշակ հանդերձի նորա. և նոյնժամայն եկաց բղխումն արեան նորա։ 45 * Եւ ասէ Յս՟. ո՞վ է՝ որ մերձեցաւն յիս։ իբրև ամենեքեան ուրանային, ասէ պետրոս՝ և որք ընդ նմա էին. վարդապետ, ժողովուրդք պնդեն և նեղեն զքեզ։ 46 * Եւ ասէ Յս՟՝ ոմն մերձեցաւ յիս. քանզի գիտացի եթէ զօրութիւն ել յինէն։ 47 * Իբրև ետես կինն՝ եթէ ոչ ծածկեցաւ 'ի նմանէ, եկն դողալով՝ և անկաւ առաջի նորա. թէ վասն որոյ իրաց մերձեցաւ 'ի նա, պատմեաց առաջի ամ՟ ժողովրդեանն. և եթէ ո՞րպ բժշկեցաւ առժամայն։ 48 * Եւ ասէ՝ քաջալերեա՛ց դուստր. հաւատք քո կեցուցին զքեզ. երթ 'ի խաղաղութի։ 49 * Եւ մինչդեռ նա խօսէր, գայ ոմն 'ի տանէ ժողովրդապետին՝ և ասէ ցնա. մեռաւ դուստրն քո. մի՛ ինչ աշխատ առներ զդա։ 50 * Իսկ Յս՟ իբրև լուաւ՝ պատասխանի ետ նմա և ասէ. մի՛ երկնչիր, միայն հաւատա՛, և կեցցէ։ 51 * Եւ մտեալ 'ի տունն՝ ո՛չ զոք եթող մտանել՝ բայց միայն զՊետրոս և զՅակոբոս. և զՅովհաննէս. և զհայր մանկանն և զմայր նորա։ 52 * Լային ամենեքեան՝ և կոծէին զնա. և նա ասէ. մի՛ լայք, զի չէ՛ մեռեալ՝ այլ ննջէ։ 53 *Եւ նոքա ծաղր առնէին զնա. զի գիտէին թէ մեռաւ։ 54 * Եւ նր՟ հանեալ զամենեսին արտաքս։ * Կալաւ զձեռանէ նորա. բարբառեցաւ և ասէ. 55 աղի՛ կա՛ց մանուկ դու։ * Եւ դարձաւ ոգի նորա, և կանգնեցաւ վաղվաղակի. և հրամայեաց տալ նմա ուտել։ 56 * Եւ զարմացան ծնօղքն նորա. և նա պատուիրէր մի՛ ումեք ասել՝ որ ինչ եղեն։ 57

ԳԼ: Թ.

ԳԼ:

Ե՛ւ ‖ կոչեալ զերկոտասան առաքեալսն. ետ նոցա զզօրութի և զիշխանութի 'ի վ՟ր ամ՟ դիւաց. և բժշկել զհիւանդութիւս։ 1 * Եւ առաքեաց զնս՟ քարոզել զարքայութիւն Այ՟. և բժշկել զախտաժէտս։ 2 * ‖ Եւ ասէ ցնս՟. մի՛ ինչ բառնայք 'ի ճանապարհի. մի՛ գաւազան. և մի՛ մախաղ. մի՛ հաց. և մի՛ արծաթ. և մի՛ երկուս հանդերձս ունիցիք։ 3 * Եւ յոր տուն մտանիցէք՝ անդ ագջիք. և անտի գնայցէք։ 4 * Եւ որք ոչ ընդունիցին զձեզ, ‖ յորժամ ելանիցէք 'ի քաղաքէն յայնմանէ, զփոշի ոտից ձերոց թօթափեսջիք 'ի վկայութի նց՟։ 5 * Եւ ելեալ շրջէին ընդ քաղաքս և ընդ գիւղս. աւետարանէին և բժշկէին ընդ ամ՟ տեղիս։ 6 * ‖ Լուաւ հերովդէս չորրորդապետ ըզ 7 գործսն ամ՟. և զարմանայր վս՟ ասելոյն յոմանց՝։ 8 * Եթէ յօհաննէս յարեաւ 'ի մեռելոց. և յոմանց՝ թէ եղիա յայտնեցաւ. և յայլոց եթէ մարգարէ ոմն յառաջնոցն յարեաւ։ 9 * Ասէ հերովդէս. զյօհաննէս ես գլխատեցի. իսկ սա ո՞վ իցէ՝ զորմէ զայսպիսի իրս լսեմ. և խնդրէր տեսանել զնա։

10 * Դարձան առաքեալքն. և պատմեցին նմա զամ՟՝ զոր արարին. և առեալ զնոսա՝ խուսեաց առանձինն 'ի տեղի անապատ՝ քաղաքի միոյ, որում անուն էր բեթսայիդա։ 11 * Եւ ժողովուրդքն իբրև գիտացին, գնացին զհետ նր՟. և ընկալեալ զնս՟՝ խօսէր ընդ նոսա վասն արքայութե Այ՟. և որոց պէտք էին բժշկութե՝ բժշկէր։ 12 * Եւ օրն սկսաւ տարաժամել. մատեան երկոտասանքն և ասեն ցնա. ‖ արձակեա՛ զժողովուրդ, զի երթեալ շուրջ 'ի գիւղսն և յագարակս՝ հանգիցեն. և գտցեն զկերակուր, զի աստ յանապատի տեղւոջ եմք։ 13 *Ասէ ցնս՟. տո՛ւք դուք նց՟ ուտել։ և նոքա ասեն. ‖ ո՛չ գոյ մեր աւելի քան զհինգ նկանակ և զերկուս ձկունս. բայց եթէ երթիցուք՝ գնեսցուք բաւական ժողովրդեանդ կերակուր։ 14 *Քանզի էին արք իբրև հինգ հազարք։ ասէ ցաշակերտսն. բազմեցուցէք զդոսա դասս դասս՝ յիսուն յիսուն։ 15 * Եւ արարին այնպէս. և բազմեցուցին զամենեսեան։



*Եւ

Marginal references: ‖ Մատ. 10. 1. Մարկ. 3. 13. ‖ Մատ. 10. 9. Մարկ. 6. 8. ‖ Գործ. 13. 51. ‖ Մատ. 14. 1. Մարկ. 6. 14. ‖ Մատ. 14. 15. Մարկ. 6. 36. ‖ Յով. 6. 9.

16 Եւ առեալ զհինգ նկանակսն և զերկուս ձկունսն՝ հայեցաւ յերկինս. օրհնեաց՝ և եբեկ. և տայր աշակերտացն արկանել ժողովրդեանն ։ 17 Կերին և յագեցան ամենեքեան ։ և բարձին զնշխարս կոտորոցն՝ երկոտասան սակառի ։

Գ. Կ

18 Եւ եղև 'ի կալն ն՞ր յաղօթս առանձինն. էին ընդ նմա և աշակերտքն ն՞ր ։ եհարց զն՞ս և ասէ. զո՞ ոք ասեն զինէն ժողովուրդքն՝ թէ իցեմ ։ 19 Եւ նոքա պատասխանի տուեալ ասեն ։ զՅովհաննէս մկրտիչ ։ և այլք զԵղիա ։ իսկ այլք թէ մարգարէ ոմն յառաջնոցն յարեաւ ։ 20 Ասէ ցն՞ս. դուք զո՞վ ոք ասէք զինէն, թէ իցեմ ։ պատասխանի ետ Պետրոս և ասէ. զՔ՞ն Ա՞յ ։

21 Նա սաստեաց 'ի նոսա. և պատուէր եբեաց, մի՛ ումեք ասել զայն ։

22 Եւ ասէր թէ պարտ է որդւոյ մարդոյ բազում չարչարիլ՝ և անարգիլ՝ 'ի քահանայապետից և 'ի ծերոց և 'ի դպրաց. և սպանանիլ՝ և յերիր աւուր յառնել ։ 23 Եւ ասէր առ ամենեսին. եթէ ոք կամի զկնի իմ գալ, ուրասցի զանձն՝ և առցէ զխաչ իւր հանապազ՝ և եկեսցէ զհետ իմ ։ 24 Զի որ կամիցի զանձն իւր կեցուցանել՝ կորուսցէ զնա. և որ կորուսցէ զանձն իւր վ՞ն իմ, կեցուսցէ զնա ։ 25 Զի՞նչ օգուտ է մարդոյ եթէ զաշխարհ շահեսցի. և զանձն իւր կորուսցէ, կամ տուժեսցէ ։

26 Զի որ ամօթ համարեսցի զիս և զբանս իմ, զնա և որդի մարդոյ յամօթ արասցէ՝ յորժամ գայցէ փառօք իւրովք՝ և Հօր՝ և հրեշտակաց սրբոց ։ 27 Բայց արդարև ասեմ ձեզ. եթէ են ոմանք 'ի դոցանէ, որք այդր կան. որք մի՛ ճաշակեսցեն զմահ, մինչև տեսցեն զարքայութի՞ւն Ա՞յ ։ 28 Եւ եղև յետ այսց բանից իբրև աւուրք ութ. առեալ զՊետրոս՝ և զՅակոբոս՝ և զՅովհաննէս՝ ել 'ի լեառն կալ յաղօթս ։ 29 Եւ 'ի կալ նմա յաղօթս՝ եղև տեսիլ երեսաց նորա այլակերպ. և փոխեցաւ հանդերձ ն՞ր. և եղև սպիտակ փայլուն ։ 30 Եւ ահա արք երկու խօսէին ընդ նմա. որք էին Մովսէս և Եղիա ։ 31 Երևեալ փառօք ։ և ասէին զելսն նորա, զոր կատարելոց էր յԵ՞մ ։

32 Իսկ Պետրոս՝ և որք ընդ նմայն էին՝ ծանրացեալք 'ի քնոյ՝ զարթեան. և տեսին զփառսն նորա՝ և զերկուս արսն, որք կային առ նմա ։ 33 Եւ եղև 'ի մեկնելն ն՞ց 'ի նմանէ, ասէ Պետրոս ց՞Յս. վարդապետ՝ բարւոք է մեզ աստ լինել. և արասցուք երիս տաղաւարս ։ մի քեզ. և մի Մովսէսի. և մի Եղիայի ։ և ոչ գիտէր զինչ խօսէր ։ 34 Եւ իբրև զայս ասաց, եկն ամպ, և հովանի եղև 'ի վ՞ր ն՞ց ։ և երկեան 'ի մտանելն նոցա ընդ ամպովն ։ 35 Ձայն եղև յամպոյն և ասէ. Դա՛ է Որդի իմ ընտրեալ. դմա լուարուք ։ 36 Եւ ընդ լինել բարբառոյն՝ գտաւ Յս միայն ։ և նոքեանք լռեցին, և ոչ ումեք պատմեցին յաւուրսն յայնոսիկ և ոչինչ՝ յորոց տեսինն ։

Գ. Ի

37 Եւ եղև 'ի վաղիւն մինչ իջանէին նոքա 'ի լեռնէ անտի, ընդառաջ եղև նմա ժողովուրդ բազում ։ 38 Եւ ահա այր մի 'ի ժողովրդենէ անտի աղաղակեաց և ասէ ։ վարդապետ. աղաչեմ զքեզ՝ հայեա՛ց յորդի իմ ։ զի միամօր է ինձ ։ 39 Եւ ահա այս հարկանէ 'ի նմա ։ և յանկարծ գոչէ՝ և զարկուցանէ՝ և թաւալեցուցանէ զնա՝ և փրփրեցուցանէ. և հազիւ մեկնի 'ի նմանէ խորտակեալ զնա ։ 40 Եւ աղաչեցի զաշակերտսն քո՝ զի հանցեն զնա. և ոչ կարացին ։ 41 Պատասխանի ետ Յս և ասէ ։ ո՞վ ազգ անհաւատ և թիւր. մինչև յե՞րբ եղէց ընդ ձեզ՝ և անսայցեմ ձեզ ։ մատո՛ այսր զորդին քո ։

42 Եւ մինչդեռ մատչիւր, զարկոյց զնա դևն՝ և շարժլեաց ։ 43 Սաստեաց Յս այսոյն պղծոյ. և բժշկեաց զմանուկն. և ետ զնա ցհայր իւր ։

44 Եւ զարմանային ամենեքեան 'ի վ՞ր մեծամեծացն Ա՞յ ։ և 'ի զարմանալ ամենեցուն 'ի վ՞ր ա՞մ զոր առնէր. ասէ ցաշակերտսն իւր. դի՛ք դուք 'ի լսելիս ձեր զբանս զայսոսիկ. զի որդի մարդոյ մատնելոց է 'ի ձեռս մարդկան ։

45 Եւ նոքա ո՛չ գիտէին զբանն. և էր ծածկեալ 'ի նոցանէ՝ զի մի՛ գիտասցեն ։ և երկնչէին հարցանել ցնա վ՞ն բանին այնորիկ ։ 46 Եմուտ խորհուրդ 'ի նոսա՝ թէ ո՞վ արդեօք մեծ իցէ 'ի նոցանէ ։ 47 Յս իբրև ծանեաւ զխորհուրդս սրտից ն՞ց. էառ զմանուկ մի. և կացոյց 'ի մէջ նոցա առ իւր ։

48 Եւ ասէ ցն՞ս ։ որոք ընկալցի զմանուկս զայս յանուն իմ, զիս ընդունի. և որ զիս ընդունիցի, ընդունի զառաքիչն իմ ։ զի որ փոքրիկն է յամենեսին 'ի ձեզ՝ նա եղիցի մեծ ։ 49 Պատասխանի ետ Յոհաննէս և ասէ ։ վարդապետ՝ տեսաք զոմն. որ յանուն քո դևս հանէր՝ և արգելաք զնա. զի ոչ շրջի ընդ մեզ ։

50 Ասէ ցն՞ս Յս. մի՛ արգելուք. զի որ ոչն է ձեր թշնամի, 'ի ձեր կողմն է ։

Գ. Գ

51 Եւ եղև 'ի կատարել աւուրց վերանալոյ ն՞ր՝ և ինքն զերեսս հաստատեաց երթալ յԵ՞մ ։ 52 Եւ առաքեաց հրեշտակս առաջի երեսաց իւրոց ։ և իբրև չոգան՝ մտին 'ի գիւղ մի սամարացւոց պատրաստել ինչ նմա ։

Եւ

Մտթ. 16.13. Մրկ. 8.27. Մտթ. 17.21. Մրկ. 8.31. և 9.30. Մտթ. 10.38. և 16.24. Մրկ. 8.34. Ղուկ. 14.27. Ղուկ. 17.33. Յոհ. 12.25. Մտթ. 10.33. Մրկ. 8.38. 2. Տիմ. 2.12. Մտթ. 16.28. Մրկ. 8.39. Մտթ. 17.1. Մրկ. 9.1. 2. Պետ. 1.17. Մտթ. 17.14. Մրկ. 9.16. Մտթ. 18.1. Մրկ. 9.33.

*Եւ ոչ ընկալան զնա։ զի դէմեդեալ 53
էր նր̃ երթալ յե̃մ։ *Իբրեւ տեսին 54
աշակերտքն յակոբոս եւ յօհաննէս, ա_
սեն։ Տ̃ր՝ կամիս, զի ասասցուք. եւ իջցէ
հուր յերկնից՝ եւ սատակեսցէ զն̃ս։
*Դարձաւ սաստեաց ՚ի նոսա եւ ասէ։ 55
ոչ գիտէք որոյ հոգւոյ էք դուք։
‖Յօհան. *‖ Զի որդի մարդոյ ոչ եկն զոգիս 56
3.17. եւ մարդկան կորուսանել՝ այլ կեցուցա_
12. 47. նել։ եւ գնացին յայլ գիւղ։ *Եւ մինչ 57
դեռ երթային նոքա ՚ի ճանապարհին,
ասէ ոմն ցնա. եկից եւ ես զկնի քո՝ յոր
վայր եւ երթիցես։ *Ասէ ցնա Յս̃։ 58
‖Մատ. ‖ աղուէսուց որջք գոն. եւ թռչնոց երկ
8.20. նից դադարք. եւ որդւոյ մարդոյ ոչ գոյ՝
ուր դիցէ զգլուխ։ *Ասէ ցմիւս եւս։ 59
եկ զկնի իմ։ եւ նա ասէ։ Տ̃ր՝ հրամա՛ն
տուր ինձ՝ երթալ նախ թաղել զհայր
իմ։ *Ասէ ցնա Յս̃։ թո՛ղ զմեռեալսն՝ 60
թաղել զմեռեալս իւրեանց։ եւ դու
երթ, եւ պատմեա՛ զարքայութ̃ն Ա̃Յ։
*Ասէ եւ այլոմն. եկից զկնի քո Տէր. 61
բայց նախ հրամա՛ն տուր ինձ հրաժա
րել ՚ի տանէ իմմէ։ *Ասէ ցնա Յս̃։ 62
ոչո՛ք արկանէ զձեռն զմաճով՝ եւ հայի
ցի յետս, եթէ յաջողեալ իցէ արքայ
ութ̃ն Ա̃Յ։

## Գլ: Ժ։

Գ.Գ. Յետ այսորիկ երեւեցոյց Տ̃ր եւ այլ 1
եւս եօթանասուն եւ երկուս։ եւ
առաքեաց զն̃ս երկուս երկուս առաջի
իւր յա̃մ քաղաքս եւ ՚ի տեղիս, ուր ինքն
‖Մատ. երթալոց էր։ *Եւ ասէ ցն̃ս։‖ հունձք 2
9.37. բազում են՝ եւ մշակք սակաւ։ արդ՝
աղաչեցէք զՏէր հնձոց. զի հանցէ
‖Մատ. մշակս ՚ի հունձս իւր։ *Երթա՛յք,‖ ա_ 3
10. 16. հա առաքեմ զձեզ իբրեւ զգառինս ՚ի
‖Մարկ. մէջ գայլոց։ *‖Մի բառնայք զքսակ. 4
6. 8. եւ մի մախաղ։ մի կօշիկս։ ‖ եւ ՚ի ճա_
‖4 Թագ. նապարհի ումեք ողջոյն մի տայցէք։
4. 29. *Յոր տուն մտանիցէք, նախ ասաս 5
ջիք թէ ողջոյն տանս այսմիկ։
*Եթէ իցէ անդ որդի ողջունի, հան_ 6
գիցէ ողջոյնն ձեր ՚ի վ̃ն նր̃. ապա թէ
ոչ՝ ՚ի ձեզ դարձցի։ *Եւ ՚ի նմին տան 7
ագանիջիք։ ուտիջիք եւ ըմպիջիք ՚ի
‖2. Օրէ. նոցանէ. ‖ զի արժանի է մշակն վար_
24. 14. ձու իւրոյ։ մի փոխիցիք ՚ի տանէ ՚ի
Մատ. տուն։ *Յոր քաղաք մտանիցէք՝ եւ 8
10. 10. ընդունիցին զձեզ՝ ուտիջիք զինչ առա
1. Տիմ. ջի դնիցեն ձեր։ *Եւ բժշկեսջիք որք 9
5.18. ՚ի նմա հիւանդք իցեն։ եւ ասասջիք նց̃.
մերձեալ է ՚ի վ̃ն ձեր արքայութ̃ն ա̃յ։
*Իսկ յոր քաղաք մտանիցէք, եւ ոչ 10
ընդունիցին զձեզ, իբրեւ ելանիցէք ՚ի
‖Գործ. հրապարակս նորա, ասասջիք։ *‖Եւ 11
13. 51. զփոշին որ կառուցեալ է ՚ի քաղաքէ ձեր_

մէ յոտս մեր՝ թօթափեսցուք ՚ի ձեզ։
բայց զայս գիտասջիք՝ զի մերձեալ է
12 արքայութ̃ն ա̃յ։ *Ասեմ ձեզ. զի սօ_
դոմացւոց ընդարձակագոյն լիցի յաւ_
ուրն յայնմիկ՝ քան քաղաքին այնմիկ։
13 *‖Վա՜յ քեզ քորազին։ վա՜յ քեզ բեթ ‖Մատ.
սայիդա։ զի եթէ ՚ի տիւրոս. եւ ՚ի սի_ 11. 21.
դօն եղեալ էին զօրութիւքն՝ որք եղեն
՚ի ձեզ, վաղուց եւս արդեօք ՚ի խորգ եւ
՚ի մոխիր նստեալք ապաշխարեալ էին։
14 *Բայց տիւրոսի, եւ սիդօնի ընդար_
ձակագոյն լիցի ՚ի դատաստանի՝ քան
15 ձեզ։ *Եւ դու կափառնաում՝ որ մին
չեւ յերկինս բարձրացեալ ես. մինչեւ
16 ՚ի դժոխս իջցես։ *‖Որ ձեզ լսէ, ինձ ‖Մատ.
լսէ։ եւ որ զձեզ անարգէ, զիս անար_ 10. 40.
գէ. եւ որ զիս անարգէ՝ զառաքիչն իմ Յօհ.
անարգէ։ եւ որ ինձ լսէ՝ լսէ այնմիկ որ 13.20.
17 առաքեացն զիս։ *Դարձան եօթա_
նասուն եւ երկուքն խնդութ̃բ եւ ասեն.
Տ̃ր՝ եւ դեւք հնազանդին մեզ յանուն
18 քո։ *Եւ ասէ ցն̃ս։ տեսանէի զսատա
նայ անկեալ յերկնից իբրեւ զփայլակն։
19 *Ահա ետու ձեզ զիշխանութի կոխել
զօձս եւ զկարիճս եւ զա̃մ զօրութի թշ_
նամւոյն։ եւ ձեզ ոչինչ մեղանչիցեն։
20 *Բայց ընդ այն մի խնդայք՝ եթէ այսք
հնազանդին ձեզ. այլ խնդացէք. զի
անուանք ձեր գրեալ են յերկինս։
21 *‖Ի նմին ժամու ցնծացաւ Յս̃ հոգ ‖Մատ.
ւովն սրբով եւ ասէ։ գոհանամ զքէն 11. 25.
հայր. Տ̃ր երկնից եւ երկրի։ զի ծած_
կեցեր զայս յիմաստնոց եւ ՚ի գիտնոց՝
եւ յայտնեցեր զայս տղայոց։ այո՛ հայր։
զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո։
22 *Ամենայն ինչ տուաւ ինձ ՚ի հօրէ
իմմէ։ եւ ոչո՛ք գիտէ՝ ո՛վ է Որդի, եթէ
ոչ՝ հայր։ եւ ո՞ է հայր՝ եթէ ոչ՝ Որդի։
եւ ում կամիցի Որդին յայտնել։
23 *Եւ դարձեալ առանձինն առ աշա_
կերտսն ասէ։ ‖ երանի աչաց՝ որք տե ‖Մատ.
սանիցեն՝ զոր տեսանէքդ։ 13.16.
24 *Ասեմ ձեզ։ զի բազում մարգարէք
եւ թագաւորք կամեցան տեսանել՝ զոր
դուքդ տեսանէք՝ եւ ոչ տեսին։ եւ լսել
զոր լսէքդ, եւ ոչ լուան։
25 *‖Եւ ահա յարեաւ ոմն օրինական՝ Գ.Ի.
փորձէր զնա եւ ասէր։ վա՛րդապետ,
զի՞նչ գործեցից՝ զի զկեանս յաւիտե ‖Մատ.
26 նականս ժառանգեցից։ *Եւ նա ասէ 22.35.
ցնա։ յօրէնսն զի՞նչ գրեալ է։ ո՞րպէս ‖Մարկ.
27 ընթեռնուս։ *Նա պատասխանի ետ 12.28.
եւ ասէ։ ‖ սիրեսցես զՏ̃ր Ա̃Ծ քո յա̃մ ‖2.Օրէ.
սրտէ քումմէ. եւ յա̃մ անձնէ քումմէ. 6. 5.
եւ յա̃մ զօրութ̃է քումմէ. եւ յա̃մ մտաց
քոց։ եւ զընկեր քո իբրեւ զանձն քո։
28 *Եւ ասէ ցնա։ ուղիղ ետուր զպա_
տասխանիդ։ զայդ արա, եւ կեցցես։

*Նա

29 *Նա իբրեւ կամեցաւ զանձն արդարացուցանել. ասէ ցՅս. Եւ ո՞վ է իմ ընկեր։ 30 *Պատասխանի ետ Յս եւ ասէ. այր մի իջանէր յԵՂմէ յԵրիքով. եւ անկաւ ՚ի ձեռս աւազակաց. որք մերկացուցին զնա՝ եւ վէրս ՚ի վերայ եդին. թողին կիսամահ՝ եւ գնացին։ 31 *Դէպ եղեւ քահանայի միոջ իջանել ընդ նոյն ճանապարհ. եւ տեսեալ զնա՝ զանց արար։ 32 *Նոյնպէս եւ ղեւտացի մի եկեալ ընդ նոյն տեղի՝ ետես եւ զանց արար։



33 *Սամարացի ոմն ճանապարհորդեալ եկն ընդ նոյն առ նովաւ. եւ տեսեալ զնա՝ գթացաւ։ 34 *Եւ մատուցեալ պատեաց զվէրս նր. արկեալ ՚ի վր ձէթ եւ գինի. եւ եդեալ ՚ի վերայ գրաստու իւրոյ՝ էած զնա ՚ի պանդոկ մի, եւ դարմանեաց զնա։ 35 *Եւ ՚ի վաղիւն անդր իբրեւ ելանէր անտի, հանեալ ետ ցպանդոկապետն երկուս դահեկանս. եւ ասէ. դարման տար դմա. եւ զորինչ ծախեսցես ՚ի դմա՝ ՚ի միւս անգամ գալստեան իմում հատուցից քեզ։ 36 *Արդ՝ ո՞ յերեցունց ՚ի նոցանէ թուի քեզ մերձաւոր լեալ անկելոյն ՚ի ձեռս աւազակաց։ 37 *Եւ նա ասէ՝ որ արար զողորմութիւն ՚ի վր նր։ ասէ ցնա Յս. Երթ՝ եւ դու արա նոյնպէս։ 38 *Եւ եղեւ ՚ի գնալն նց, եւ ինքն եմուտ ՚ի գիւղ մի. եւ կին ոմն անուն Մարթա՝ ընկալաւ զնա ՚ի տան իւրում։ 39 *Եւ նր էր քոյր մի. որում անուն էր Մարիամ. որ եւ եկն, նստաւ առ ոտսն Տն. եւ լսէր զբանսն նր։ 40 *Եւ Մարթա զբաղեալ էր ՚ի բազում սպասու. եկն եւ եկաց առ նմա եւ ասէ. Տր ոչինչ է փոյթ քեզ. զի քոյրդ իմ միայն եթող զիս ՚ի սպասու. արդ՝ ասա դմա. զի օգնեսցէ ինձ։ 41 *Պատասխանի ետ նմա Յս եւ ասէ. Մարթա՛, Մարթա, դու հոգաս՝ եւ զբազում իւիք զբաղեալ ես։ 42 *Բայց աստ սակաւ ինչ պիտոյ է. Մարիամ՝ մասն բարի ընտրեաց. որ ոչ բարձցի ՚ի նմանէ։

## ԳԼ. ԺԱ.

Դ.Օ.

1 Եւ եղեւ ՚ի տեղւոջ ուրեք կալ յաղօթս. եւ իբրեւ դադարեաց, ասէ ցնա ոմն յաշակերտացն իւրոց. Տէր, ուսո մեզ յաղօթս կալ. ո՛րպ եւ Յովհաննէս ուսոյց աշակերտաց իւրոց։ 2 *Ասէ ցնս. յորժամ կայցէք յաղօթս. ասասջիք. ‖ Հայր մեր՝ սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութի քո։ 3 *Զհաց մեր հանապազորդ տուր մեզ զօրըստօրէն։ 4 *Եւ թող մեզ զմեղս մեր. զի եւ մեք թողումք ամի՝ որ պարտիցի մեզ. եւ մի տանիր զմեզ ՚ի փորձութի։ 5 *Եւ ասէ ցնս. ո՞վ է ՚ի ձէնջ՝ որոյ իցէ բարեկամ. եւ երթայցէ առ նա ՚ի մէջ գիշերի. եւ ասիցէ ցնա. բարեկամ, տուր ինձ փոխ երիս նկանակս. 6 *Զի բարեկամ իմ եկն առ իս յուղւոյ. եւ ոչինչ ունիմ դնել առաջի նր։ 7 *Եւ ՚ի ներքուստ տայցէ պատասխանի եւ ասիցէ. մի աշխատ առներ զիս. զի դուրքդ փակեալ են. եւ մանկունքս ընդ ինեւ կան յանկողնի. ոչ կարեմ յառնել եւ տալ քեզ։ 8 *Եթէ նա ստիպեսցէ բաղխելով՝ ասեմ ձեզ. եթէ ոչ յարուցեալ տայցէ նմա վն բարեկամութեն, սակայն վասն ժտութեն յարուցեալ տայցէ նմա՝ զինչ եւ պիտոյ իցէ։ 9 *‖ Եւ ես ասեմ ձեզ. խնդրեցէք, եւ տացի ձեզ. հայցեցէք, եւ գտջիք. բաղխեցէք, եւ բացցի ձեզ։ 10 *Զի ամ, որ խնդրէ, առնու. եւ որ հայցէ, գտանէ. եւ որ բաղխէ, բացցի նմա։ 11 *‖ Յո՞ ոք ՚ի ձէնջ հայր՝ խնդրիցէ որդի իւր ձուկն, միթէ փոխանակ ձկան օձ տայցէ նմա։ 12 *Եւ կամ խնդրիցէ ձու՝ միթէ կարիճ տայցէ նմա։ 13 *Իսկ եթէ դուք՝ որք չարքդ էք՝ գիտէք պարգեւս բարիս տալ որդւոց ձերոց. ո՞րչափ եւս առաւել հայրն ձեր յերկնից տացէ բարիս այնոցիկ, որք խնդրեն ՚ի նմանէ։

Դ.Է.

14 *‖ Եւ հանէր դեւ մի համր. եւ եղեւ յելանել դիւին՝ խօսեցաւ համրն. եւ զարմացան ամենայն ժողովուրդն։

*Եւ

‖ Մատ. 6. 9.
‖ Մատ. 7. 7. և 21. 22.
Մարկ. 11. 24.
Յովհ. 14. 13.
Յակ. 1. 5.
‖ Մատ. 7. 9.
‖ Մատ. 9. 32. և 12. 22.

Մատթ. 9.34. Մարկ. 3.22.

15 *Եւ ոմանք 'ի նոցանէ ասեն. Բեեղզեբուղաւ իշխանաւն դիւաց հանէ դա զդեւս։ 16 *Եւ այլք փորձէին՝ եւ նշան յերկնից խնդրէին 'ի նմանէ։

17 *Իսկ նորա գիտացեալ զխորհուրդս նոցա, ասէ ցնոսա. Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն՝ աւերի. եւ տուն բաժանեալ յանձն՝ կործանի։

18 *Ապա եթէ եւ սատանայ բաժանեալ յանձնէ. զիարդ կացցէ թագաւորութիւն նորա. զի ասէք զինէն թէ Բեեղզեբուղաւ իշխանաւ հանէ դա զդեւս։

19 *Եթէ ես Բեեղզեբուղաւ հանեմ զդեւս. որդիքն ձեր իւ հանիցեն. վասն այսորիկ նոքին եղիցին ձեր դատաւորք։ 20 *Իսկ եթէ մատամբ Աստուծոյ հանեմ զդեւս, ապա հասեալ է 'ի վերայ ձեր արքայութիւն Աստուծոյ։ 21 *Յորժամ հզօր վառեալ պահիցէ զտուն իւր, 'ի խաղաղութեան են ինչք նորա։ 22 *Բայց եթէ հզօրագոյն քան զնա 'ի վերայ եկեալ յաղթեսցէ նմա, զսպառազինութիւն նորա հանէ՝ յոր յուսացեալ էր. եւ զաւար նորա բաշխեսցէ։

23 *Որ ոչ է ընդ իս՝ հակառակ իմ է. եւ որ ոչ ժողովէ ընդ իս, ցրուէ։

24 *Յորժամ այսն ելանիցէ 'ի մարդոյ՝ շրջի ընդ անջրդին տեղիս. խնդրէ հանգիստ. եւ իբրեւ ոչ գտանէ, ասէ. դարձայց անդրէն 'ի տուն իմ ուստի ելի։ 25 *Եւ գայ գտանէ մաքրեալ եւ յարդարեալ։ 26 *Յայնժամ երթայ եւ առնու եօթն այլ այսս չարեաս քան զինքն՝ եւ մտեալ բնակի անդ. եւ լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան զառաջինն։ 27 *Եւ եղեւ մինչդեռ խօսէր զայս՝ ձայն եբարձ կին մի 'ի ժողովրդենէ անտի եւ ասէ. Երանի է որովայնին՝ որ կրեաց զքեզ. եւ ստեանցն՝ որք դիեցուցին զքեզ։ 28 *Եւ նա ասէ. Նա երանի այնոցիկ է. որք լսեն զբանն Աստուծոյ, եւ պահեն։ 29 *Եւ 'ի դիզանալ 'ի վերայ նորա ժողովրդոյն՝ սկսաւ ասել. Ազգս այս, ազգ չար է. նշան խնդրէ. եւ նշան յերկնից ոչ տացի սմա, բայց նշանն Յովնանու։ 30 *Զի որպէս եղեւ Յովնան նշան Նինուէացւոց, այնպէս եղիցի եւ որդի մարդոյ ազգիս այսմիկ։ 31 *Դշխոյն հարաւոյ յարիցէ 'ի դատաստանի ընդ արս ազգիս այսորիկ՝ եւ դատապարտեսցէ զսոսա. զի եկն 'ի ծագաց երկրի լսել զիմաստութիւն Սողոմոնի. եւ ահա առաւել քան զՍողոմոն է աստ։

32 *Արք Նինուէացիք յարիցեն 'ի դատաստանի ընդ ազգիս այսմիկ՝ եւ դատապարտեսցեն զսա. զի ապաշխարեցին 'ի քարոզութեան Յովնանու. եւ ահա առաւել քան զՅովնան է աստ։

33 *Ոչ ոք լուցեալ ճրագ՝ դնէ 'ի թաքստեան, եւ ոչ ընդ գրուանաւ, այլ 'ի վերայ աշտանակի. զի որք մտանեն, զլոյս տեսանիցեն։

Մատթ. 12.39. Յովն. 2.1. 3 Թագ. 10.1. 2 Մնաց. 9.1. Յովն. 3.5.

Մատթ. 5.15. Մարկ. 4.21. Մատթ. 6.22.

34 *Ճրագ մարմնոյ ակն է. յորժամ ակն առատ է, ամենայն մարմինն լուսաւոր եղիցի. եւ երբ ակն չար է, եւ մարմինն խաւարին եղիցի։ 35 *Արդ՝ զգոյշ լեր՝ գուցէ լոյսդ որ 'ի քեզ է՝ խաւար իցէ։

36 *Եթէ մարմինդ քո ամենայն լուսաւոր է, եւ չգուցէ մասն ինչ խաւարին, եղիցի լուսաւոր ամենայն. որպէս յորժամ ճրագն նշուլիւք լուսաւորեսցէ զքեզ։

37 *Եւ մինչ խօսէր զայս՝ աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոյն, զի ճաշ կերիցէ առ նմա. եւ նա մտեալ բազմեցաւ։

38 *Իբրեւ ետես փարիսեցին, զարմացաւ. զի նախ ոչ մկրտեցաւ յառաջ քան զճաշն։ 39 *Ասէ ցնա Տէր. Այժմ դուք փարիսեցիք զարտաքին զբաժակին եւ զպնակին սրբէք. եւ ներքինն ձեր լի է յափշտակութեամբ եւ չարութեամբ։

40 *Անմիտք. ոչ ապաքէն որ զարտաքինն արար՝ եւ զներքինն նոյն արար։

41 *Բայց զայն զարժանն իսկ, տուք ողորմութիւն. եւ ահա ամենայն սուրբ է ձեր։

42 *Այլ վայ ձեզ փարիսեցւոց. զի տասանորդէք զանանուխ. եւ զփեգենայ. եւ զամենայն բանջար. եւ անցանէք զիրաւամբք եւ զսիրովն Աստուծոյ. զայս արժան էր առնել՝ եւ զայնու ոչ անցանել։

43 *Վայ ձեզ փարիսեցւոց. զի սիրէք զբարձրագահս 'ի ժողովուրդս, եւ զողջոյնս 'ի հրապարակս։

44 *Վայ ձեզ՝ զի էք դուք իբրեւ զգերեզմանս անյայտս. եւ մարդիկ գնան 'ի վերայ՝ եւ ոչ գիտեն։ 45 *Պատասխանի ետ ոմն յօրինականացն, եւ ասէ. վարդապետ, զայդ բան ասելով՝ եւ զմեզ թշնամանես։ 46 *Եւ նա ասէ. Եւ ձեզ վայ օրինականացդ. զի բառնայք մարդկան բեռինս դժուարակիրս. եւ դուք մատամբ միով 'ի բեռինսն ոչ մերձենայք։ 47 *Վայ ձեզ. զի շինէք զշիրիմս մարգարէից. եւ հարքն ձեր սպանին զնոսա։ 48 *Ապաքէն վկայէք եթէ կամակիցք էք գործոց հարցն ձերոց. զի նոքա կոտորեցին զնոսա. եւ դուք զգերեզմանս նոցա շինէք։

49 *Վասն այնորիկ իմաստութիւն Աստուծոյ ասաց. առաքեցից 'ի նոսա մարգարէս եւ առաքեալս. եւ 'ի նոցանէ սպանանիցեն, եւ հալածիցեն։ 50 *Զի խնդրեսցի արիւն ամենայն մարգարէից հեղեալ 'ի սկզբանէ աշխարհի յազգէ յայդմանէ։

51 *Յարենէն Աբելի մինչեւ յարիւնն Զաքարիայ կորուսելոյ ընդ սեղանն եւ ընդ տաճարն. այո ասեմ ձեզ՝ խնդրեսցի յազգէ յայդմանէ։

Մատթ. 23.25. Մատթ. 23.23. Մատթ. 23.6. Մարկ. 12.39. Ղուկ. 20.46. Մատթ. 23.4. Ծննդ. 4.8. 2 Մնաց. 24.22.

52 * Վա՜յ ձեզ օրէնսականացդ․ զի թաքուցանէք զփականս գիտութեան․ դուք ոչ մտանէք, և որք մտանելոցն են, արգելուք։ 53 * Եւ ՚ի խօսելն զայս ընդ նոսա առաջի ամենայն ժողովրդեանն, զամօթի հարկանէին․ և սկսան դպիրքն և փարիսեցիքն չարել՝ և դրդուել ընդ նմա վասն բազում իրաց։ 54 * Եւ սպասել որսալ ինչ բանս ՚ի բերանոյ նորա՝ զի չարախօսեսցեն զնմանէ։

## ԳԼ․ ԺԲ․

1 Որում ՚ի կուտել բիւրաւորաց ժողովրդեանն, մինչև կոխել զմիմեանս․ սկսաւ ասել ցաշակերտս իւր, Նախ՝ զգո՛յշ լերուք անձանց ՚ի խմորոյ փարիսեցւոցն, որ է կեղծաւորութիւն։ (Մատ. 16. 6. Մարկ. 8. 15.)
2 * Զի ոչինչ է ՚ի ծածուկ՝ որ ոչ յայտնեսցի․ և գաղտնի՝ որ ոչ ծանիցի։
3 * Վասն այսորիկ զորինչ ասիցէք ՚ի խաւարի, լսելի լիցի ՚ի լոյս․ և զոր յունկան խօսեցայք ՚ի շտեմարանս, քարոզեսցի ՚ի վերայ տանեաց։ (Մատ. 10. 26. Մարկ. 4. 22.)
4 * Բայց ձեզ ասեմ սիրելեաց իմոց․ մի՛ զարհուրիք յայնցանէ, որք սպանանեն զմարմին, և յետ այնորիկ աւելի ինչ ո՛չ ունիցին առնել։
5 * Ցուցից ձեզ յումմէ երկնչիցիք․ երկերո՛ւք յայնմանէ՝ որ յետ սպանանելոյ ունի իշխանութիւն արկանել ՚ի գեհեան․ այո՛ ասեմ ձեզ՝ յայնմանէ երկերո՛ւք։
6 * Ո՞չ ապաքէն հինգ ձագք երկուց դանգաց վաճառին․ և մի ՚ի նոցանէ ո՛չ է մոռացեալ առաջի Ա՛Յ։
7 * Այլ ձեր և ամենայն իսկ հեր գլխոյ թուեալ է․ մի՛ երկնչիք՝ զի քան զբազում ճագս լաւ էք դուք։
8 * Ասեմ ձեզ․ զի ամ որ խոստովանեսցի յիս առաջի մարդկան, և որդի մարդոյ խոստովանեսցի զնմանէ առաջի հրեշտակաց Ա՛Յ։ (Մատ. 10. 32. Մարկ. 8. 38. 2. Տիմ. 2. 12.)
9 * Եւ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացեալ լիցի առաջի հրեշտակաց Ա՛Յ։
10 * Եւ ամենայն որ ասէ բան զորդւոյ մարդոյ՝ թողցի նմա․ բայց որ զՀոգին սուրբ հայհոյեսցէ, մի՛ թողցի նմա։ (Մատ. 12. 32. Մարկ. 3. 29.)
11 * Այլ յորժամ տանիցեն զձեզ ՚ի ժողովուրդս և ՚ի պետութիւնս, մի՛ հոգայցէք՝ որպէս թէ զինչ պատասխանի տայցէք․ կամ զինչ ասիցէք։
12 * Զի Հոգին սուրբ ուսուսցէ ձեզ ՚ի նմին ժամու՝ զինչ պարտիցէ խօսել։

ԿԲ․

13 * Ասէ մի ՚ի ժողովրդենէն ցնա․ վարդապետ, ասա՛ ցեղբայր իմ, բաժանել ընդ իս զժառանգութիւն։
14 * Եւ նա ասէ ցնա․ ա՛յր դու՝ ո՛ կացոյց զիս դատաւոր, կամ բաժանարար ՚ի վերայ ձեր։
15 * Եւ ասէ ցնոսա․ տեսէք, և զգո՛յշ լերուք յամ ագահութենէ․ զի ո՛չ եթէ ՚ի մթերից ընչից ուրուք իցեն կեանք նորա։
16 * Խօսեցաւ առ նոսա առակ մի, և ասէ․ Առն ուրումն մեծատան եռոտն անդք առհմականս։ (Սիր. 11. 19.)
17 * Եւ խորհէր ՚ի միտս իւր՝ և ասէր․ զի՞ գործեցից՝ զի ո՛չ գոյ տեղի, ուր ժողովեցից զարդիւնս իմ։
18 * Եւ ասէ՝ գիտեմ զինչ արարից․ քակեցից զշտեմարանս իմ․ և ես մեծամեծս շինեցից․ և անդր ժողովեցից զցորեան, և զամ բարութիւնս իմ։
19 * Եւ ասացից ցանձն իմ․ անձն, ունիս բազում բարութիւնս, համբարեալ ամաց բազմաց․ հանգիր, կեր, արբ, և ուրախ լեր։
20 * Ասէ ցնա Ա՛Ծ․ անմիտ, յայսմ գիշերի զոգիդ ՚ի քէն ՚ի բաց պահանջիցեն․ իսկ զոր պատրաստեցերն՝ ո՞ւմ լինիցի։
21 * Այնպէս և որ գանձէ անձին, և ո՛չ յԱ՛Ծ մեծանայցէ։
22 * Ասէ ցաշակերտսն իւր․ վասն այդորիկ ասեմ ձեզ՝ մի՛ հոգայք ընդ ոգւոյ՝ թէ զինչ ուտիցէք․ և մի՛ ընդ մարմնոյ՝ թէ զինչ զգենուցուք։ (Սաղմ. 54. 23. Մատ. 6. 25. 1. Պետ. 5. 7.)
23 * Զի ոգի առաւել է քան զկերակուր, և մարմին քան զհանդերձ։
24 * Հայեցարո՛ւք ընդ ագռաւս, զի ո՛չ սերմանեն՝ և ո՛չ հնձեն․ որոց ո՛չ գոն շտեմարանք՝ և ո՛չ համբարանոցք․ և Ա՛Ծ կերակրէ զնս․ ո՞րչափ ևս առաւել զձեզ՝ որք լաւ էք քան զթռչունս։
25 * Ո՞վ ՚ի ձէնջ առ հոգալ՝ կարիցէ յաւելուլ ՚ի հասակ իւր կանգուն մի։
26 * Իսկ արդ եթէ ՚ի փոքուն չէք բաւական՝ վասն այլոյն զի՞ հոգայք։
27 * Հայեցարո՛ւք ընդ շուշանն, որպէս աճէ․ ո՛չ ջանայ՝ և ո՛չ նիւթէ․ ասեմ ձեզ՝ և ո՛չ Սողոմոն յամենայնի փառսն իւր զգեցաւ իբրև զմի ՚ի նոցանէ։ (յամէնէ- ւէտն)
28 * Իսկ եթէ զխոտն՝ որ այսօր ՚ի բացի է, և վաղի՛ւ ՚ի հնոց արկանելի, Ա՛Ծ այնպէս զգեցուցանէ․ ո՞րչափ ևս առաւել զձեզ՝ թերահաւատք։
29 * Եւ դուք մի՛ խնդրէք զինչ ուտիցէք, կամ զինչ ըմպիցէք․ և մի՛ զբաղնուք։
30 * Զի զայն ամ՝ հեթանոսք աշխարհի խնդրեն․ այլ ձեր Հայր գիտէ՝ զի պիտոյ է այն ամ։
31 * Բայց խնդրեցէ՛ք նախ՝ զարքայութիւն Ա՛Յ, և զարդարութիւն նր․ և այն ամենայն յաւելցի ձեզ։

ԿԳ․

32 * Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ․ զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն։
33 * Վաճառեցէ՛ք զինչս ձեր․ և տո՛ւք զողորմութիւն․ և արարէ՛ք ձեզ քսակս առանց հնանալոյ, գանձ անպակաս յերկինս․ ուր ո՛չ գող մերձենայ․ և ո՛չ ցեց ապականէ։ (Մատ. 19. 21. Մատ. 6. 20.)
34 * Զի ուր գանձն ձեր է, անդ և սիրտք ձեր եղիցին։
35 * Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս

մէջս. և ճրագունք լուցեալք: *Եւ 36 դուք նմանողք մարդկան՝ որք ակն ունիցին տեառն իւրեանց՝ թէ երբ դառնայցէ ՚ի հարսանեաց: զի յորժամ գայցէ և բաղխիցէ, վաղվաղակի բանայցեն նմա: *Երանի իցէ ծառայիցն 37 այնոցիկ՝ զորս եկեալ տէրն գտցէ արթունս. ամէն ասեմ ձեզ՝ զի գօտի ընդ մէջ ածցէ՝ և բազմեցուսցէ զնոսա. և անցեալ պաշտեսցէ զնոսա: *Եւ ե- 38 թէ յերկրորդ, կամ՝ յերրորդ պահու եկեսցէ և գտցէ այնպէս, երանելիք են ծառայքն այնոքիկ: *Այս զայն գի- 39 տասջիք. եթէ գիտէր տանուտէրն յորում ժամու գող գայ՝ հսկէր, և չտայր թողուլ ական հատանել ՚ի տան իւրում: *Եւ դուք եղերուք պատ- 40 րաստք՝ զի յորում ժամու ոչ կարծիցէք՝ գայ որդի մարդոյ: *Ասէ Պետ- 41 րոս. Տէ՛ր առ մե՞զ ասացեր զառակդ՝ թէ առ ամենեսեան: *Եւ ասէ 42 Տէր. ո՞վ իցէ հաւատարիմ տնտես և իմաստուն. զոր կացոյց Տէր իւր ՚ի վ(երայ) գերդաստանի իւրոյ՝ տալ ՚ի ժամու զկերակուրս: *Երանի իցէ ծառային 43 այնմիկ՝ զոր եկեալ տէր իւր գտանիցէ արարեալ այնպէս: *Արդարև ասեմ 44 ձեզ՝ զի ՚ի վերայ ամ(ենայն) ընչից իւրոց կացուսցէ զնա: *Ապա թէ ասիցէ ծա- 45 ռայն այն ՚ի սրտի իւրում, յամէ տէր իմ ՚ի գալ. և սկսանիցի հարկանել զծառայս և զաղախնայս. ուտել՝ և ըմպել՝ և արբենալ: *Եկեսցէ տէր ծառային 46 այնորիկ, յաւուր յորում ակն ոչ ունիցի. և ՚ի ժամու, յորում ոչ գիտիցէ. ընդ մէջ կտրեսցէ զնա՝ և զբաժին նորա ընդ անհաւատս դիցէ: *Եւ ծառայ՝ 47 որ գիտիցէ զկամս տեառն իւրոյ, և ոչ պատրաստեսցէ ըստ կամաց նորա՝ արբցէ գան բազում: *Եւ որ ոչն գի- 48 տիցէ, և արժանի գանի ինչ գործիցէ, արբցէ գան սակաւ: ամենայնի, որում շատ տուաւ, շատ խնդրեսցի ՚ի նմանէ. և որում բազում աւանդեցաւ, աւաւել ևս պահանջեսցեն ՚ի նմանէ:

Մատթ. 24. 43.
Յայտ. 16.15.

ԵԳ

*Հուր եկի արկանել յերկիր. և զի՞նչ 49 կամիմ, թէ արդէն իսկ բորբոքիւր: *Եւ մկրտութի՛ւն մի ունիմ՝ մկրտիլ. և 50 զիա՞րդ փութամ մինչև կատարեսցի: *Համարիք, եթէ խաղաղութի՛ւն եկի 51 տալ յերկիր. ո՛չ՝ ասեմ ձեզ՝ այլ բաժինս: *Զի եղիցին յայսմհետէ հինգ 52 ՚ի տան միում բաժանեալք. երեքն յերկուց. և երկուքն յերից: *Բաժանեսցին, հայր յորդւոյ. և որդի ՚ի հօրէ. 53 մայր ՚ի դստերէ, և դուստր ՚ի մօրէ. սկեսուր ՚ի հարսնէ, և հարսն ՚ի սկեսրէ իւրմէ: *Ասաց և ժողովրդոցն, 54

Մատթ. 10. 34.
Մատթ. 16.2.

յորժամ տեսանիցէք ամպ ծագեալ յարևմտից, խոկոյն ասէք, թէ անձրև 55 գայ. և լինի այնպէս: *Եւ յորժամ հարաւ շնչեալ՝ ասէք՝ թէ խորշակ լի- 56 նի. և լինի այնպէս: *Կեղծաւորք՝ զերեսս երկնի և երկրի գիտէք փորձել. իսկ զժամանակս զայս զիա՞րդ 57 ոչ փորձէք: *Ընդէ՞ր և յանձանց իսկ 58 ոչ ընտրէք զարժանն: Յորժամ երթայցես ընդ ոսոխի քում առ իշխան, ՚ի ճանապարհի տուր զհաշիւն զերծանիլ ՚ի նմանէ. զի գուցէ քարշիցէ զքեզ առ դատաւորն. և դատաւորն մատնիցէ դահճի. և դահիճն արկա- 59 նիցէ ՚ի բանտ: *Ասեմ քեզ. ո՛չ ելանիցես անտի՝ մինչև հատուցանիցես զյետին բնիոնն:

Մատթ. 5.25.

## ԳԼ: ԺԳ.

1 Եկին ոմանք ՚ի նմին ժամանակի. և պատմեցին նմա վասն գալիլեացւոյն. որոց զարիւնն պիղատոս խառնեաց ընդ զոհսն նոցա: 2 *Պատասխանի ետ և ասէ ցնոսա. համարիք եթէ այնք գալիլեացիք եղեն մեղաւորք քան զամ(ենայն) գալիլեացիս. 3 զի զայնպիսի անցս կրեցին: *Ո՛չ ասեմ ձեզ. այլ եթէ ոչ ապաշխարիցէք՝ ամենեքին նոյնպէս կորնչիցիք: 4 *Կամ նոքա ութուտասանքն, յորոց վերայ աշտարակն անկաւ ՚ի սիղովամ, և սպան զնոսա. համարիք, թէ նոքա պարտապանք եղեն քան զամ(ենայն) մարդիկ՝ որք բնակեալք են յեմ: 5 *Ո՛չ ասեմ ձեզ. այլ եթէ ոչ ապաշխարիցէք, ամենեքեան նոյնպէս կորնչիցիք: 6 *Ասաց և զառակս զայս. թզենի մի էր ուրումն տնկեալ յայգւոջ իւրում, և եկն խնդրել զպտուղ ՚ի նմանէ՝ և 7 ո՛չ եգիտ: *Ասէ ցայգեգործն, ահա երեք ամք են յորմէ հետէ գամ խնդրել զպտուղ ՚ի թզենւոջդ՝ և ո՛չ գտանեմ. արդ՝ կոտորեա՛ զդա, ընդէ՞ր և 8 զերկիրդ խափանէ: *Նա պատասխանի ետ և ասէ. Տէ՛ր, թո՛ղ զդա յայս ամ ևս, մինչև շուրջ զդովաւ բրեցից՝ և արկից զաղբ: 9 *Թերևս արասցէ զպտուղ. ապա թէ ո՛չ՝ յամէ ևս, հատցես զդա:

ԵԵ

10 *Եւ ուսուցանէր ՚ի միում ժողովր- 11 դանոցացն ՚ի շաբաթու: *Եւ ահա կին մի՝ զոր ունէր այս հիւանդութե, ամս ութուտասան. և էր կորկամեալ. և ո՛չ կարէր ամենևին ՚ի վեր հայիլ: 12 *Եւ տեսեալ զնա Յիսուս կոչեաց առ ինքն, և ասէ ցնա. կի՛ն դու՝ արձակեալ ես ՚ի հիւանդութենէ քումմէ: 13 *Եւ եդ ՚ի վերայ նո(րա) ձեռն. և առժա-

մայն

մայն ուղղեցաւ. և փառաւոր առնէր զԱծ: 14 *Պատասխանի ետ ժողովրդապետն ցասուցեալ՝ թէ ընդէր 'ի շաբաթու բժշկեաց Յս, և ասէ ցժողովուրդն. վեց օր է՝ յորս արժան է գործել. յայնս եկայք և բժշկեցարուք. և մի յաւուր շաբաթու: 15 *Պատասխանի ետ նմա Տր, և ասէ. կեղծաւորք՝ իւրաքանչիւրոք 'ի ձէնջ 'ի շաբաթու ոչ արձակէ զեզն իւր, կամ զէշ 'ի մսրոյ՝ և տանի տայ ջուր: 16 *Իսկ այս դուստր Աբրահամու էր, զոր կապեաց սատանայ ահաւասիկ ժութուտասն ամ, ոչ էր արժան արձակել 'ի կապանաց անտի 'ի շաբաթու: 17 *Եւ զայս իբրև ասէր, յամօթ լինէին ամենեքեան, որք հակառակն կային նմա. և ամ ժողովուրդն ուրախ լինէր 'ի վր ամենայն փառաւորութեանցն, որք գործէին 'ի նմանէ: 18 *Եւ ասէր, ում նման է արքայութի Այ. և ընդ ում նմանութե նմանեցուցից զնա: 19 *‖ Նման է հատոյ մանանխոյ. զոր առեալ մարդոյ՝ եարկ 'ի պարտէզ իւր. աճեաց և եղև ծառ. և թռչունք երկնից բնակեալ էին յոստս նր: 20 *Եւ դարձեալ ասէ՝ ում նմանեցուցից զարքայութի Այ: 21 *‖ Նման է խմորոյ՝ զոր առեալ կնոջ՝ թաքոյց յալեր երից գրուից՝ մինչև խմորեցաւ ամենայն:

‖ Մատթ. 13.31. Մարկ. 4.31. ‖ Մատթ. 13.33.

ԿԹ

22 *Եւ շրջէր ընդ քաղաքս և ընդ գիւղս՝ ուսուցանէր: և ճանապարհ արարեալ յԵմ: 23 *Ասէ ցնա ոմն, Տր, եթէ սակաւք իցեն, որք ապրելոց իցեն: և նա ասէ ցնս: 24 *‖ Ջանացարուք մտանել ընդ դուռն նեղ. ասեմ ձեզ՝ զի բազումք խնդրեսցեն մտանել՝ և ոչ կարասցեն: 25 *‖ Յորմէ հետէ մտցէ տանուտէրն՝ և փակեսցէ զդուռն. և սկսանիցիք կալ արտաքոյ՝ և բաղխել ըզդուռն, և ասել. Տր, Տր, բաց մեզ. և պատասխանի տուեալ ասիցէ ձեզ. ոչ գիտեմ զձեզ ուստի էք: 26 *Յայնժամ սկսանիցիք ասել. կերաք առաջի քո, և արբաք՝ և 'ի հրապարակս մեր ուսուցեր: 27 *Եւ ասիցէ ձեզ. ‖ ոչ գիտեմ զձեզ ուստի էք. ‖ 'ի բաց կացէք յինէն ամ մշակք անիրաւութեան: 28 *Անդ եղիցի լալ և կրճել ատամանց. յորժամ տեսանիցէք զԱբրահամ. և զԻսահակ, և զՅակոբ՝ և զամ մարգարէս յարքայութե Այ. և զձեզ հանեալ արտաքս: 29 *Եւ եկեսցեն յարևելից, և յարևմտից, և 'ի հիւսիսոյ, և 'ի հարաւոյ, և բազմեսցին յարքայութե Այ: 30 *‖ Եւ ահա յետինք, որք եղիցին առաջինք. և իցեն առաջինք, որք լինիցին յետինք: 31 *Ինմին աւուր մատեան

‖ Մատթ. 7.13. ‖ Մատթ. 25.10. ‖ Մատթ. 7.23. ‖ Սաղմ. 6.9. Մատթ. 25.41. ‖ Մատթ. 19.30. և 20.16



ոմանք փարիսեցիք, և ասեն. ել և գնա աստի. զի հերովդէս կամի սպանանել զքեզ: 32 *Եւ նա ասէ ցնոսա. երթայք ասացէք աղուեսուն այնմիկ. ահաւասիկ հանեմ դևս. և բժշկութիս կատարեմ այսօր, և վաղիւ, և յերիր աւուր կատարիմ: 33 *Բայց պարտ է այսօր, և վաղիւ, և 'ի միւսում աւուր գնալ. զի ոչ է մարթ մարգարէի կորնչել արտաքոյ քան զԵմ: 34 *‖ Եմ, Եմ, որ կոտորէիր զմարգարէս, և քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ. քանիցս անգամ կամեցայ ժողովել զորդիս քո. որպէս հաւ զձագս իւր ընդ թևօք՝ և ոչ կամեցայք: 35 *Ահա թողեալ լիցի ձեզ տուն ձեր †. բայց ասեմ ձեզ. եթէ ոչ ևս տեսանիցէք զիս, մինչև ասիցէք՝ օրհնեալ եկեալ յանուն Տն:

Մարկ. 10.31. ‖ Մատթ. 23.37. †աւերակ

## ԳԼ: ԺԴ:

ԿԷ

1 Եւ եղև 'ի մտանել նորա 'ի տուն ումեմն իշխանացն փարիսեցւոց 'ի շաբաթու ուտել հաց: և նոքա սպասէին նմա: 2 *Եւ ահա այր ոմն էր անդ ջրգողեալ առաջի նր: 3 *Պատասխանի ետ Յս և ասէ ցօրինաւորս՝ և ցփարիսեցիս՝ եթէ արժան իցէ 'ի շաբաթու բժշկել: 4 *Եւ նոքա լուռ եղեն: և բուռն հարեալ զնմանէ՝ բժշկեաց զնա, և արձակեաց: 5 *Եւ ասէ ցնս՝ ոյր ուրուք 'ի ձէնջ էշ, կամ եզն անկանիցի 'ի ջրհոր, և ոչ վաղվաղակի հանիցէ զնա՝ յաւուր շաբաթու: 6 *Եւ ոչ կարացին տալ նմա պատասխանի առ այն: 7 *Ասաց և առ կոչնականսն առակ մի: հայեցեալ թէ զիարդ զբարձրնտիր լինէին, ասէ ցնս: 8 *Յորժամ կոչիցէ ոք զքեզ 'ի հարսանիս, կամ 'ի կոչունս. մի բազմիցիս յառաջին բարձին. գուցէ պատուականագոյն ևս քան զքեզ իցէ կոչեցեալ 'ի նմանէ: 9 *Եւ եկեալ՝ որ զքեզ և զնա կոչեաց՝ ասիցէ ցքեզ. տուր սմա տեղի: և ապա սկսանիցիս ամօթով զյետին տեղին ունել: 10 *Այլ յորժամ կոչիցիս, երթիջիր՝ բազմեսջիր 'ի յետին տեղւոջ: զի յորժամ գայցէ՝ որ կոչեացն զքեզ, ասիցէ ցքեզ. ‖ բարեկամ 'ի վեր մատիր: յայնժամ եղիցին քեզ փառք առաջի բարձակցացն քոց: 11 *‖ Զի ամ, որ բարձրացուցանէ զանձն, խոնարհեսցի: և որ խոնարհեցուցանէ զանձն, բարձրասցի: 12 *Ասէ և ցկոչնատէրն: յորժամ առնիցես ճաշ՝ կամ ընթրիս, մի կոչեր զբարեկամս քո. և մի զեղբարս քո: և մի զազգականս քո: և մի զդրացիս քո: և մի զմեծամեծս: զի մի և նոքա փոխարէն կոչիցեն զքեզ՝

‖ Առակ. 25.7. ‖ Մատթ. 23.12. Ստոր. 18.14.

Տոբ. 4. 7. Առակ. 3. 9.

13 և լինիցի քեզ հատուցումն։ * Այլ յորժամ առնիցես ընդունելութիւն, կոչեա՛ զաղքատս՝ և զխեղս՝ և զկաղս՝ և զկոյրս։ 14 * Եւ երանելի լինիցիս, զի ոչ ունին փոխարէն հատուցանելոյ քեզ։ և հատուսցի քեզ փոխարէն 'ի յարութեան արդարոց։ 15 * Իբրև լուաւ զայս ոմն 'ի բազմականացն՝ ասէ ցնա։ Երանի, որ կերիցէ հաց յարքայութեան Այ։

Մատ. 22. 2. Յայտ. 19. 9.

16 * Եւ նա ասէ ցնա։ Այր ոմն գործեաց ընթրիս, և հրաւիրեաց զբազումս։ 17 * Եւ առաքեաց զծառայ իւր 'ի ժամու ընթրեացն կոչել զհրաւիրեալսն, թէ եկա՛յք։ զի ահաւասիկ պատրաստ է ամենայն ինչ։ 18 * Եւ սկսան մի ըստ միոջէ ամենեքեան հրաժարել։ առաջինն ասէ. ագարակ գնեցի. և հարկ է ելանել՝ և տեսանել զնա. աղաչեմ զքեզ՝ կա՛լ զիս հրաժարեալ։ 19 * Եւ միւսն ասէ. լուծս հինգ՝ եզանց գնեցի. և երթամ փորձել զնոսա. աղաչեմ զքեզ՝ կա՛լ զիս հրաժարեալ։ 20 * Եւ միւսն ասէ. կին ածի, և վասն այնորիկ ոչ կարեմ գալ։ 21 * Եւ եկեալ ծառայն պատմեաց զամենայն տեառն իւրում։ յայնժամ բարկացեալ տանուտէրն՝ ասէ ցծառայն իւր. Ե՛լ վաղվաղակի 'ի հրապարակս և 'ի փողոցս քաղաքիս։ և զաղքատս՝ և զխեղս՝ և զկաղս՝ և զկոյրս մո՛յծ այսր։ 22 * Եւ ասէ ծառայն։ Տէր, եղև զոր հրամայեցերն։ և կայ ևս տեղի։ 23 * Եւ ասէ տէրն ցծառայն. Ե՛լ 'ի ճանապարհս, և 'ի ցանգս. և արա՛ այսր մտանել. զի լցցի տունս իմ։ 24 * Ասեմ ձեզ. զի ոչ ոք յայնց կոչեցելոց ճաշակեսցէ յընթրեաց իմոց։

ԾԿ

25 * Եւ երթային ընդ նմա ժողովուրդք բազումք։ դարձաւ և ասէ ցնոսա։

Մատ. 10. 37.

26 * Եթէ ոք գայ առ իս՝ և ոչ ատեայ ըզհայր իւր և զմայր. և զկին իւր, և զորդիս. և զեղբարս և զքորս. նաև զանձն ևս իւր, ո՛չ կարէ իմ աշակերտ լինել։

Մատ. 10. 38. և 16. 24. Մարկ. 8. 34.

27 * Եւ որ ո՛չ բառնայ զխաչ իւր՝ և գայ զկնի իմ, ո՛չ կարէ իմ աշակերտ լինել։ 28 * Ո՞վ ոք 'ի ձէնջ կամիցի շինել աշտարակ. և ոչ նախ նստեալ համարիցի զծախսն եթէ ունիցի բաւական 'ի կատարումն։ 29 * Օ՛ն գուցէ իբրև արկանիցէ զհիմն՝ և ո՛չ կարասցէ կատարել, ամենեքեան՝ որք տեսանիցեն՝ սկսանիցին ծաղր առնել զնա։ 30 * Եւ ասել։ եթէ այս այր սկսաւ շինել՝ և ո՛չ կարաց կատարել։ 31 * Կամ ո՞ր թագաւոր երթեալ տայցէ պատերազմ ընդ այլում թագաւորի. և ո՛չ նստեալ նախ խորհիցի. եթէ կարող իցէ տասն հազարաւ զդէմ ունել այնորիկ՝ որ գայցէ 'ի վերայ նորա քսան հազարաւ։ 32 * Ապա թէ ոչ՝ մինչդեռ հեռագոյն իցէ հրեշտակութիւն առաքեալ աղաչեսցէ 'ի խաղաղութիւն։ 33 * Արդ՝ այսպէս ամենայն ոք 'ի ձէնջ. որ ո՛չ հրաժարեսցի յամենայն ընչից իւրոց, ո՛չ կարէ իմ աշակերտ լինել։

Մատ. 5. 13. Մարկ. 9. 49.

34 * Բարւոք է աղ. ապա թէ աղն անհամեսցի, ի՞ւ համեմեսցի։ 35 * Ո՛չ յերկիր՝ և ո՛չ յաղբ է պիտանացու։ այլ ընկենուլ զնա արտաքս։ որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։

## ԳԼ. ԺԵ.

1 Եւ էին մերձ առ նա ամենայն մաքսաւորք, և մեղաւորք լսել 'ի նմանէ։ 2 * Տրտնջէին փարիսեցիքն և դպիրք՝ և ասէին. ընդէ՞ր սա զմեղաւորս ընդունի՝ և ուտէ ընդ նոսա։ 3 * Ասաց առ նոսա զառակս զայս։

Մատ. 18. 12.

4 * Ո՞վ ոք իցէ 'ի ձէնջ մարդ՝ որոյ իցէ հարիւր ոչխար, և կորուսանիցէ զմի 'ի նոցանէ. ո՞չ թողուցու զիննսուն և զինն յանապատի. և երթայցէ զհետ կորուսելոյն մինչև գտանիցէ զնա։ 5 * Եւ իբրև գտանէ, դնէ զնա 'ի վերայ ուսոց իւրոց խնդալով։ 6 * Եւ երթայ 'ի տուն. կոչէ զբարեկամս և զդրացիս. և ասէ ցնոսա։ ուրախ եղերուք ընդ իս. զի գտի զոչխարս իմ զկորուսեալ։ 7 * Ասեմ ձեզ. զի այսպէս է ուրախութիւն յերկինս վասն միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ՝ քան վասն իննսուն և ինն արդարոց՝ որոց չիցէ պիտոյ ապաշխարութիւն։ 8 * Կամ ո՞վ իցէ կին. որոյ իցեն դրամք տասն։ և եթէ կորուսանիցէ զդրամ մի. ո՞չ լուցանիցէ զճրագ. և ածիցէ զաւել 'ի տան. և խնդրիցէ ստէպ՝ մինչև գտանիցէ։ 9 * Եւ իբրև գտանէ, կոչէ զբարեկամս և զդրացիս և ասէ։ ուրախ եղերուք ընդ իս. զի գտի զդրամն իմ՝ զոր կորուսի։ 10 * Այնպէս՝ ասեմ ձեզ, ուրախութիւն եղիցի առաջի հրեշտակաց Այ 'ի վերայ միոյ մեղաւորի՝ որ ապաշխարիցէ։

11 * Եւ ասէ։ առն միոջ էին երկու որդիք։ 12 * Ասէ կրտսերն 'ի նոցանէ ցհայրն. հա՛յր՝ տո՛ւր ինձ բաժին. որ անկանի յընչիցդ. և նա բաժանեաց նոցա զկեանսն։ 13 * Եւ յետ ո՛չ բազում աւուրց՝ ժողովեալ զամենայն կրտսեր որդւոյն՝ գնաց յաշխարհ հեռի։ և անդ վատնեաց զինչս իւր, զի կեայր անառակութեամբ։ 14 * Եւ իբրև սպառեաց զամենայն, եղև սով սաստիկ յաշխարհին յայնմիկ։ և սկսաւ ինքն չքաւորիլ։ 15 * Եւ գնացեալ յարեցաւ 'ի միում քաղաքացւոց աշխարհին այնորիկ։ և յղեաց զնա յագարակ իւր արածել զխոզս։ 16 * Եւ ցանկայր լնուլ զորովայն իւր յեղջերէն, զոր խոզքն ուտէին. և ոչ ոք տայր նմա։

* Եւ

17 *Եւ եկեալ 'ի միտս իւր, ասէ. քանի՞ վարձկանք են 'ի տան հօր իմոյ հացալիցք. և ես աստ սովամահ կորնչիմ: 18 *Յարուցեալ գնացից առ հայր իմ. և ասացից ցնա: Հա՛յր՝ մեղայ յերկինս՝ և առաջի քո: 19 *Եւ ոչ ևս եմ արժանի կոչել որդի քո: արա՛ զիս իբրև զմի 'ի վարձկանաց քոց:



20 *Եւ յարուցեալ եկն առ հայր իւր: և մինչդեռ հեռագոյն էր, ետես զնա հայրն՝ և գթացաւ. յարեաւ և ընթացաւ ընդառաջ. անկաւ զպարանոցաւն նր, և համբուրեաց զնա: 21 *Եւ ասէ ցնա որդին: Հա՛յր, մեղայ յերկինս՝ և առաջի քո. ոչ ևս եմ արժանի կոչել որդի քո: 22 *Ասէ հայրն ցծառայս իւր: վաղվաղակի հանէք զպատմուճանն զառաջին, և ագուցէք նմա. և տուք զմատանին 'ի ձեռս նր. և կօշիկս յոտս նր: 23 *Եւ ածէք զեզն պարարակ, և զենէք: կերիցուք, և ուրախ լիցուք: 24 *Զի այս որդի իմ մեռեալ էր, և եկեաց. կորուսեալ էր, և գտաւ: և սկսան ուրախ լինել: 25 *Եւ էր երէց որդի նր յագարակի: և մինչդեռ գայր՝ և մերձ եղև 'ի տունն, լուաւ զձայն երգոց և պարուց: 26 *Եւ կոչեցեալ առ ինքն զմի 'ի ծառայից հարցանէր՝ թէ զինչ իցէ այն: 27 *Եւ նա ասէ ցնա: զի եղբայր քո եկեալ է. և եզեն հայր քո զեզն պարարակ. զի ողջամբ ընկալաւ զնա: 28 *Բարկացաւ՝ և ոչ կամէր մտանել: և հայրն ելեալ արտաքս՝ աղաչէր զնա: 29 *Պատասխանի ետ և ասէ ցհայրն: այս քանի՞ ամք են՝ զի ծառայեմ քեզ. և երբէք զպատուիրանաւ քով ոչ անցի: ուլ մի երբէք ոչ ետուր ինձ՝ զի ուրախ եղէց ընդ բարեկամս իմ: 30 *Եւ յորժամ եկն որդիդ քո այդ՝ որ եկեր զկեանս քո ընդ պոռնիկս, զենէր դմա զեզն պարարակ: 31 *Եւ ասէ ցնա. որդեակ, դու հանապազ ընդ իս ես: և 32 ամ̃ որինչ իմ է՝ քո է: *Այլ ուրախ լինել՝ և խնդալ պարտ էր: զի եղբայր քո այս՝ մեռեալ էր, և եկեաց. կորուսեալ էր, և գտաւ:

## ԳԼ. ԺԶ.

Օր.

1 Եւ ասէր առ աշակերտսն: այր մի էր մեծատուն. որոյ էր տնտես. և եղև զնմանէ ամբաստանութի̃. որ͂ 2 թէ վատնիցէ զինչս նր: *Կոչեաց, և ասէ ցնա. զի՞նչ է այս, զոր լսեմս զքէն. տո՛ւր զհամար տնտեսութեան քոյ. զի ոչ ևս կարես լինել տնտես: 3 *Ասէ ընդ միտս իւր տնտեսն: զի՞նչ գործեցից. զի տէր իմ հանէ զտնտեսութիս. գործել ոչ կարեմ՝ մուրանալ ամաչեմ: 4 *Գիտեմ, զինչ արարից. զի յորժամ 'ի բաց լինիցիմ 'ի տնտեսութէս՝ ընկալցին զիս 'ի տունս իւրեանց: 5 *Եւ կոչեալ առ ինքն մի ըստ միոջէ 'ի պարտապանաց տեառն իւրոյ. ասէ ցառաջինն, քանի՞ ինչ պարտիս 6 տեառն իմում: *Եւ նա ասէ, հարիւր մար ձիթոյ. ասէ ցնա՝ կա՛ զգիր քո՝ և նիստ գրեա՛ վաղվաղակի յիսուն: 7 *Դարձեալ ասէ ցմիւսն՝ դու քանի՞ ինչ պարտիս. և նա ասէ՝ հարիւր քոռ ցորենոյ: և ասէ ցնա՝ կա՛ զգիր քո՝ և 8 նիստ գրեա՛ ութսուն: *Եւ գովեաց Տրն զտնտեսն անիրաւութե̃ զի իմաստութբ արար. զի որդիք աշխարհիս այսորիկ իմաստնագոյնք են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց: 9 *Եւ ես ձեզ ասեմ. արարէք ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութե̃. զի յորժամ պակասիցի այն՝ ընկալցին զձեզ 'ի յարկսն յաւիտենականս: 10 *Որ 'ի փոքուն հաւատարիմ է, և 'ի բազմին հաւատարիմ է. և որ 'ի փոքուն անիրաւ է, և 'ի բազմին անի- 11 րաւ է: *Իսկ արդ եթէ յանիրաւ մամոնային չեղէք հաւատարիմք. զճշմա- 12 րիտն ձեզ ո՞ հաւատասցէ: *Եւ եթէ յօտարին չեղէք հաւատարիմք. զձերն 13 ո՞ տացէ ձեզ: *Ոչ ոք ծառայ կարէ երկուց տերանց ծառայել. զի եթէ զմին ատիցէ, և զմիւսն սիրիցէ. կամ զմին մեծարիցէ, և զմիւսն արհամարհիցէ.

Մատ. 6.24.

հիցէ. ոչ կարէք Այ ծառայել և մա
մոնայի։ *Լսէին զայս ամ փա_ 14
րիսեցիքն՝ քանզի արծաթասէրք էին,
և անգոսնէին զնա։ *Եւ ասէ ցնոսա. 15
դուք էք՝ որք արդարացուցանէք զան
ձինս առաջի մարդկան. բայց Այ
գիտէ զսիրտս ձեր. զի որ առաջի մարդ
կան բարձր է՝ պիղծ է առաջի Այ։
*‖ Օրէնք և մարգարէք մինչև ցՅո_ 16
հաննէս. յայնմհետէ արքայութի Այ
բռնաբարի. և ամ ոք զնա բռնաբա_
րէ։ *‖ Դիւրին իցէ երկնից և երկրի 17
անցանել՝ քան յօրինացն միոյ նշանա_
խեցի անկանել։ *‖ Ամենայն, որ ար_ 18
ձակէ զկին իւր, և առնէ այլ՝ շնայ.
և որ զարձակեալն առնէ, շնայ։

Մատ. 11. 12. առակ_ բանի. ‖ Մատ. 5.18. ‖ Մատ. 5. 32. Մարկ. 10. 1. Կոր. 7. 10.



*Այր ոմն էր մեծատուն. և ագանէր 19
բեհեզս և ծիրանիս. և ուրախ լինէր
հանապազ առատապէս։ *Եւ աղքատ 20
ոմն անուն Ղազարոս անկեալ դնիւր
առ դրանն նր վիրաւորեալ։ *Եւ ցան 21
կայր յագել ՚ի փշրանացն՝ որք անկա_
նէին ՚ի սեղանոյ մեծատանն. այլ և
շունք եւս գային. և լեզուին զվէրս նր։
*Եղև ՚ի մեռանել աղքատին, և տա 22
նել հրեշտակաց զնա ՚ի գոգն աբրահա
մու. մեռաւ և մեծատունն՝ և թաղե_
ցաւ։ *Եւ ՚ի դժոխսն ամբարձ զաչսն 23
իւր՝ մինչ ՚ի տանջանսն էր. ետես զաբ
րահամ ՚ի հեռաստանէ, և զՂազարոս
՚ի գոգ նորա հանգուցեալ։
*Եւ նա աղաղակեաց և ասէ. հայր 24
աբրահամ ողորմեա՛ ինձ. և առա_
քեա՛ զՂազարոս զի թացցէ զծագ մա_
տին իւրոյ ՚ի ջուր. և զովացուսցէ զլե
զու իմ. զի պապակիմ ՚ի տապոյ աստի։
25 *Եւ ասէ ցնա աբրահամ. որդեակ,
յիշեա՛, զի ընկալար անդէն զբարիս
քո ՚ի կեանսն քում. և Ղազարոս նոյն
պէս զչարչարանսն. արդ սա աստ մխի
թարի. և դու այդր պապակիս։
26 *Եւ ՚ի վերայ այսր ամի վիհ մեծ է ընդ
մեզ և ընդ ձեզ. եթէ կամիցին աստի
առ ձեզ անցանել՝ ոչ կարեն. և ոչ
27 այտի առ մեզ անցանել։ *Եւ ասէ՝
արդ աղաչեմ զքեզ հայր. զի արձա_
28 կեսցես զդա ՚ի տուն հօր իմոյ։ *Զի են
իմ անդ եղբարք հինգ, որպ զի տացէ նց
զվկայութիւն. զի մի՛ և նոքա գայցեն
29 յայս տեղի տանջանաց։ *Եւ ասէ
աբրահամ. ունին զմովսէս և զմարգա_
30 րէս. նոցա լուիցեն։ *Եւ նա ասէ. ոչ
հայր աբրահամ. բայց եթէ ՚ի մեռե
լոց ոք երթիցէ առ նոսա, ապաշխա_
31 րեսցեն։ *Եւ ասէ ցնա. եթէ մովսէսի
և մարգարէից ոչ լսեն. և ոչ թէ ՚ի մե
ռելոց ոք յառնիցէ՝ հաւատասցեն։

## ԳԼ: ԺԷ։

1 Ասաց ‖ և առ աշակերտսն իւր. ոչ է
մարթ չգալ գայթագղութեանց
բայց վայ այնմիկ է յոյր ձեռն գայցէ։
2 *Լաւ էր եթէ վէմ երկանաքար կա_
խէր զպարանոցէ նր՝ և անկանիւր ՚ի
ծով, քան թէ գայթագղեցուցանէ
3 զմի ՚ի փոքրկանցս յայսցանէ։ *Զգոյշ
կացէք անձանց. ‖ եթէ մեղիցէ քեզ
եղբայր քո՝ սաստեա՛ նմա. և եթէ ա_
4 պաշխարիցէ՝ թո՛ղ նմա։ *Եւ եթէ
եօթնանգամ մեղիցէ քեզ. և եօթնան
գամ դարձցի ՚ի քեզ՝ և ասիցէ, ապաշ
5 խարեմ, թողցես նմա։ *Եւ ասեն
առաքեալքն ցՏր. յաւել մեզ հաւատս։
6 *‖ Եւ ասէ Տր. եթէ ունիցիք հաւատս
քան զհատն մանանխոյ. և ասիցէք
թթենւոյս այսմիկ. խլեա՛ց, և տնկեա՛ց
՚ի ծովու. և հնազանդեսցի ձեզ։
7 *Իսկ ո՛վ ոք ՚ի ձէնջ, որ ունիցի ծա_
ռայ հողագործ, կամ հովիւ. որ իբրև
մտանիցէ յագարակէ՝ ասիցէ ցնա վաղ
վաղակի՝ թէ անց, բազմեա՛ց։
8 *Այլ ո՞չ ասիցէ ցնա՝ թէ պատրաս_
տեա՛ զինչ ընթրելոց իցեմ. և գօտի ա_
ծեալ պաշտեա՛ զիս՝ մինչև կերից, և ար
բից. և ապա կերիցես՝ և արբցես դու։
9 *Միթէ շնորհ ինչ ունիցի ծառային
այնմիկ. զի արար զամ հրամանսն։
10 *Նոյնպէս և դուք՝ յորժամ առնիցէք
զամենայն հրամայեալսն ձեզ՝ ասա_
ցիք եթէ ծառայք անպիտանք եմք։
զոր

ԶԳ. ‖ Մատ. 18. 7. Մարկ. 9.41. ‖ Ղև. 19.17. Մատ. 18.15. ‖ Մատ. 17. 19.

զոր պարտէաքն առնել, արարաք։

11 *Եւ եղեւ մինչ երթայր նա յԵրուսաղէմ. և ինքն անցանէր ընդ մէջ Սամարիայ և Գալիլեացւոց։ 12 *Եւ մինչ դեռ մտանէր 'ի դեօղ ուրումն, պատահեցան նմա տասն այր բորոտք։ որք կացին 'ի հեռաստանէ։ 13 *Եւ բարձին զձայնս. և ասեն. Յ՟ս վարդապետ՝ ողորմեա մեզ։

Ղեւ. 14.2. 14 *Եւ իբրեւ ետես զն՟ս, ասէ ցն՟ս։ Երթայք, ցուցէք զանձինս քահանայիցն։ Եւ եղեւ իբրեւ գնացին՝ առժամայն սրբեցան։ 15 *Մի ոմն 'ի նոցանէ իբրեւ ետես եթէ բժշկեցաւ, դարձաւ անդրէն, 'ի ձայն մեծ փառաւոր առնէր զԱ՟ծ։ 16 *Անկաւ առ ոտս ն՟ր 'ի վերայ երեսաց իւրոց՝ և գոհանայր զնմանէ. և ինքն էր Սամարացի։ պատասխանի ետ Յ՟ս և ասէ։

17 *Ո՞չ տասն սոքա սրբեցան. իսկ արդ ինն ո՞ւր են։

18 *Զի ոչ գտան դառնալ և տալ փառս Ա՟յ. բայց միայն այլազգիս այս։

19 *Եւ ասէ ցնա։ արի, գնա. զի հաւատք քո կեցուցին զքեզ։

ՕԳ 20 *Իբրեւ հարցաւ 'ի փարիսեցւոցն թէ երբ գայցէ արքայութի Ա՟յ, պատասխանի ետ ն՟ց և ասէ։ ոչ գայ արքայութի ա՟յ խորամանօք։ 21 *Եւ չասիցեն, թէ ահաւասիկ աստ է՝ կամ անդ։ զի ահա արքայութի ա՟յ 'ի ներքս 'ի ձեզ է։

ԶԻ 22 *Ասաց և առ աշակերտսն։ եկեսցեն աւուրք ցանկանալոյ ձեզ մի յաւուրցն որդւոյ մարդոյ տեսանել՝ և ոչ տեսանիցէք։ 23 *Եւ եթէ ասիցեն ձեզ՝ եթէ ահաւասիկ է կամ անդ. մի երթայցէք զհետ։ 24 *Զի որպէս փայլակն փայլատակեալ 'ի ներքոյ երկնից ընդ երկնիւք ծագիցէ, նոյնպէս և որդի մարդոյ յաւուրն իւրում։ 25 *Բայց նախ պարտ է նմա բազում չարչարիլ՝ և խոտիլ յազգէս յայսմանէ։ 26 *Եւ որպէս եղեւ յաւուրսն Նոյի. նոյնպէս եղիցի և յաւուրս որդւոյ մարդոյ։ 27 *Ուտէին՝ ըմպէին՝ կանայս առնէին՝ և արանց լինէին։ մինչեւ յօրն յորում եմուտ Նոյ 'ի տապանն. և եկն ջրհեղեղն՝ և կորոյս զամենեսեան։

Մատ. 24. 23. Մարկ. 13.21. Ծննդ. 7. 7. Մատ. 24. 37.

28 *Նոյնպէս՝ և որպէս յաւուրսն Ղովտայ եղեւ։ ուտէին, ըմպէին, գնէին, վաճառէին, տնկէին, շինէին։

Ծննդ. 19. 25.

29 *Եւ յորում աւուր ել Ղովտ 'ի Սոդոմայ, տեղաց հուր և ծծումբ յերկնից՝ և կորոյս զամենեսին։ 30 *Ըստ նմին օրինակի եղիցի և յաւուրն, յորում որդի մարդոյ յայտնելոց իցէ։ 31 *Յայնմ աւուր որ կայցէ 'ի տանիս՝ և կարասի իւր 'ի տան, մի իջցէ առնուլ զայն։ և որ յանդի իցէ նոյնպէս մի դարձցի յետս

32 *Յիշեցէք զկինն Ղովտայ։

33 *Որ խնդրիցէ զանձն իւր ապրեցուցանել՝ կորուսցէ զնա։ և որ կորուսցէ՝ ապրեցուսցէ զնա։

34 *Ասեմ ձեզ։ յայնմ գիշերի, թէ եղիցին երկու 'ի մի մահիճս. մին առցի, և միւսն թողցի։

35 *Եւ թէ եղիցին երկու աղալ 'ի միասին. մին առցի, և միւսն թողցի։ և եթէ իցեն երկու յանդի. մին առցի, 36 և միւսն թողցի։ *Պատասխանի ետուն և ասեն ցնա՝ յո՞ Տ՟ր։ 37 *Եւ նա ասէ ցն՟ս։ ուր մարմին է՝ անդր և արծուիք ժողովեսցին։

Մատ. 10. 39. Մարկ. 8. 35. Ղուկ. 9. 24. Յոհ. 12. 25. Մատ. 24.40.

## ԳԼ. ԺԸ.

ՕԴ 1 Ասաց և առակ մի ն՟ց. առ այն, թէ պարտ է յամժամ կալ ն՟ց յաղօթս և մի ձանձրանալ։

2 *Ասէ՝ դատաւոր մի էր 'ի քաղաքի ուրումն։ յԱ՟յ ոչ երկնչէր, և 'ի մարդկանէ ոչ ամաչէր։

Սիր. 18. 22. Թես. 1.5. 17.

3 *Եւ այրի մի էր 'ի նմին քաղաքի. գայր առ նա և ասէր։ դատ արա ինձ յոսոխէ իմմէ։ 4 *Եւ ոչ կամէր 'ի բազում ժամանակս։ յետ այնորիկ ասէ 'ի միտս իւրում. թէ և յԱ՟յ ոչ երկնչիմ. և 'ի 5 մարդկանէ ոչ ամաչեմ։ *Գոնէ վասն աշխատ առնելոյ զիս այրւոյն՝ արարից նմա դատ. զի մի իսպառ եկեալ թախանձիցէ զիս։

6 *Եւ ասէ Տ՟ր։ լուարո՛ւք զինչ դատաւորն անիրաւութեան ասէր։

7 *Իսկ Ա՟ծ ոչ առնիցէ զվրէժխնդրութի ծառայից իւրոց։ որք աղաղակեն առ նա 'ի տուէ և 'ի գիշերի։ և երկայնամիտ միայն լինիցի առ նոսա։

8 *Ասեմ ձեզ. զի արասցէ զվրէժխնդրութի ն՟ց վաղվաղակի։ իսկ որդի մարդոյ եկեալ գտանիցէ՞ արդեօք 9 հաւատս յերկրի։ *Ասաց և առ ոմանս պանծացեալս յանձինս՝ թէ արդարք իցեն՝ և խոտիցեն զբազումս, զառակս 10 զայս։ *Արք երկու ելին 'ի տաճարն կալ յաղօթս։ մինն փարիսեցի. և միւսն 11 մաքսաւոր։ *Փարիսեցին կայր մեկուսի. և զայս առանձինն աղօթս մատուցանէր։ Ա՟ծ իմ գոհանամ զքէն։ զի ոչ եմ իբրեւ զայլս 'ի մարդկանէ. զյափշտակօղս՝ և զանիրաւս՝ և զշունս. կամ իբրեւ զայս մաքսաւոր։

12 *Պահեմ երկիցս 'ի շաբաթու. և տամ տասանորդս յամենայն ստացուածոց իմոց։

13 *Եւ մաքսաւորն կայր մեկուսի. և ոչ կամէր, և ոչ զաչսն ընդ երկինս ամբառնալ։ այլ կոծէր զկուրծս իւր. և ասէր։ Ա՟ծ՝ քաւեա՛ զիս զմեղաւորս։

*Ասեմ



14 * Ասեմ ձեզ. էջ սա արդարացեալ 'ի տուն իւր քան զնա. զի ամենայն որ բարձրացուցանէ զանձն, խոնարհեսցի. և որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի:

Մատթ. 23. 12. Ղուկ. 14. 11.

15 * Մատուցանէին առ նա և մանկտի՝ զի մերձենայցէ 'ի նոսա. իբրև տեսին աշակերտքն՝ սաստէին նց: 16 * Իսկ Յս կոչեալ զնս առ ինքն՝ ասէ. թոյլ տուք մանկտւոյդ գալ առ իս, և մի արգելուք զդոսա. զի այդպիսեաց է արքայութիւն Այ. 17 * Ամէն ասեմ ձեզ. որ ոչ ընդունիցի զարքայութիւն Այ իբրև զմանուկ՝ ո՛չ մտցէ 'ի նա: 18 * Եւ եհարց զնա ոմն իշխան և ասէ. վարդապետ բարի. զի՞նչ գործեցից. զի զկեանս յաւիտենականս ժառանգեցից: 19 * Ասէ ցնա Յս. զի՞ ասես զիս բարի. չի՛ք ոք բարի, բայց մի Ած: 20 * Զպատուիրանս գիտես. մի՛ շնար. մի՛ սպանաներ. մի՛ գողանար. մի՛ սուտ վկայեր. պատուեա՛ զհայր քո և զմայր: 21 * Եւ նա ասէ՝ զայդ ամ պահեցի 'ի մանկութենէ իմմէ: 22 * Իբրև լուաւ զայս Յս, ասէ ցնա. միւս ևս պակաս է քեզ. զամ ինչ՝ զոր ունիս, վաճառեա՛ և տո՛ւր աղքատաց. և ունիցիս գանձս յերկինս. և եկ զկնի իմ: 23 * Նա իբրև լուաւ զայս՝ տրտմեցաւ. քանզի էր մեծատուն յոյժ: 24 * Իբրև ետես զնա Յս տրտմեալ՝ ասէ. ո՞րպէս դժուարին է, որք ինչս ունիցին, մտանիցեն յարքայութիւն Այ: 25 * Դիւրագոյն իցէ մալխոյ ընդ ծակ ասղան անցանել. քան մեծատան յարքայութիւն Այ մտանել: 26 * Եւ որք լուանն՝ ասէին. և ո՞ կարիցէ ապրել: 27 * Եւ նա ասէ. անհնարինք առ 'ի մարդկանէ՝ հնարաւորք են յԱյ: 28 * Եւ ասէ պետրոս. ահաւասիկ մեք թողաք զամ ինչ զմեր, և եկաք զկնի քո: 29 * Եւ նա ասէ ցնս. ամէն ասեմ ձեզ. եթէ ոչո՛ք է՝ որ եթող զտուն՝ կամ զծնօղս՝ կամ զեղբարս՝ կամ զկին՝ կամ զորդիս՝ վս արքայութեան Այ. 30 * Եթէ ոչ առնուցու բազմապատիկ, 'ի ժամանակի յայսմիկ. և յաշխարհին՝ որ գալոցն է՝ զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ: 31 * Եւ առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնոսա. ահաւասիկ ելանեմք յԵրմ. և կատարեսցին ամ գրեալքն մարգարէիւք վս Որդւոյ մարդոյ: 32 * Զի մատնեսցի հեթանոսաց. և կատակեսցին և հարկանիցին և թքանիցին: 33 * Եւ իբրև հարկանիցեն, և սպանանիցեն զնա. և յերրիր աւուր յարիցէ: 34 * Եւ նոքա ո՛չ իմացան յայնցանէ. այլ էր բանն ծածկեալ 'ի նոցանէ. և ո՛չ գիտէին զասացեալսն:

Մատթ. 20. 17. Մարկ. 10. 32.

35 * Եւ եղև 'ի մօտիլն նորա յԵրիքով՝ կոյր ոմն նստէր առ ճանապարհաւն մուրացիկ: 36 * Իբրև լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր թէ զի՞նչ իցէ այն: 37 * Եւ պատմեցին նմա, թէ Յս Նազովրեցի անցանէ: 38 * Աղաղակեաց և ասէ. Յս որդի դաւթի, ողորմեա՛ց ինձ: 39 * Եւ որք առաջին երթային, սաստէին նմա զի լռեսցէ. և նա ևս առաւել աղաղակէր. Որդի դաւթի՝ ողորմեա՛ց ինձ: 40 * Զտեղի եառ Յս. և հրամայեաց ածել զնա առ իւր. և իբրև մերձ եղև առ նա, եհարց զնա և ասէ: 41 * Զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ: Եւ նա ասէ. Տր, զի բացցին աչք իմ, և տեսից: 42 * Եւ Յս ասէ ցնա. հայեա՛ց, հաւատք քո կեցուցին զքեզ: 43 * Եւ առժամայն ետես. երթայր զհետ նր՝ և փառաւոր առնէր զԱծ. և ամ ժողովրդեանն տեսեալ՝ տայր զօրհնութիւն Այ:

Մատթ. 20. 29. Մարկ. 10. 46.

## ԳԼ. ԺԹ.

1 Եւ մտեալ շրջէր ընդ երիքով: 2 * Եւ ահա այր մի անուն կոչեցեալ զակքէոս. և նա էր մաքսապետ. և ինքն մեծատուն: 3 * Եւ խնդրէր տեսանել թէ ո՛վ իցէ Յս. և ո՛չ կարէր 'ի բազմութենէն, զի կարճ էր հասակաւ: 4 * Եւ ընթացեալ յառաջ՝ ել 'ի ժանտաթզենին, զի տեսանիցէ զնա. քանզի ընդ այն իսկ անցանելոց էր:

* Իբրև

5 *Իբրեւ եկն ՚ի տեղին, հայեցաւ ՚ի վեր Յս եւ ասէ ցնա․ զակքէ՛ փութա՛, էջ այտի․ զի այսօր ՚ի տան քում արժան է ինձ ագանել։ 6 *Փութացաւ, եւ էջ․ եւ ընկալաւ զնա ուրախութեամբ։

7 *Իբրեւ տեսին ամենեքեան․ տրտնջէին եւ ասէին, թէ առ առն մեղաւորի եմուտ լուծանել։ 8 *Եկն՝ եկաց զակքէոս՝ եւ ասէ ցՏր, Տր, ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց․ եւ եթէ զոք զրկեցի, հատուցից չորեքկին։ 9 *Եւ ասէ ցնա Յս, այսօր եղեւ փրկութիւն տանս այսմիկ․ քանզի եւ սա որդի աբրահամու էր։ 10 *‖Զի եկն որդի մարդոյ խնդրել եւ կեցուցանել զկորուսեալն։

Մտթ. 18.11.

11 *Եւ մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել առակ մի եւ ասէ․ վասն մերձենալոյն նր յԵմ, եւ համարելոյ նց եթէ առժամայն յայտնելոց արքայութիւն Այ։ 12 *Ասէ, ‖Այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի առնուլ իւր թագաւորութիւն եւ դառնալ։ 13 *Եւ կոչեաց զծառայս իւր, ետ նոցա տասն մնաս․ եւ ասէ ցնոսա՝ յարդեցէք զայդ՝ մինչեւ եկից։ 14 *Եւ քաղաքացիքն նր ատէին զնա, առաքեցին հրեշտակս զկնի նր եւ ասեն․ թէ ոչ կամիմք թագաւորել դմա ՚ի վր մեր։ 15 *Եւ եղեւ դառնալ նմա առեալ զթագաւորութիւն․ եւ կոչեաց զծառայսն, որոց տուեալ էր զարծաթն․ զի գիտասցէ թէ ո՛ զինչ շահեցաւ։ 16 *Եկն առաջինն եւ ասէ․ Տր, մնասն քո տասն մնաս արար։ 17 *Եւ ասէ ցնա․ ազնիւ՛ ծառայ եւ բարի․ զի ՚ի փոքու հաւատարիմ եղեր․ լիջիր իշխանութիւն ունել ՚ի վր տասն քաղաքի։ 18 *Եկն երկրորդն եւ ասէ․ մնասն քո արար հինգ մնաս։ 19 *Ասէ եւ ցնա․ եւ դու լիջիր ՚ի վերայ հինգ քաղաքաց։ 20 *Եկն միւսն եւ ասէ․ Տր, ահա մնասն քո՝ զոր ունէի ծրարեալ ՚ի վար շամակի․ երկնչէի ՚ի քէն․ 21 *Զի այր ստամբակ ես․ բառնաս, զոր ոչ եդեր․ եւ հնձես, զոր ոչ սերմանեցեր։

Մտթ. 25.14.

22 *Եւ ասէ ցնա․ ՚ի բերանոյ քումմէ դատեցից զքեզ ծառայ անհաւատ․ գիտէիր թէ ես այր մի ստամբակ եմ․ բառնամ, զոր ոչ եդի․ եւ հնձեմ, ուր ոչ սերմանեցի․ 23 *Եւ ընդէ՞ր ոչ ետուր զարծաթդ իմ ՚ի սեղանաւորս․ եւ ես եկեալ էր տոկոսեօք պահանջէի։ 24 *Եւ ասէ ցսպասաւորսն․ առէք ՚ի դմանէ զմնասն․ եւ տուք այնմ, որ ունի զտասն մնասն։ 25 *Եւ ասեն ցնա․ Տր, ունի տասն մնաս։ 26 *‖Ասեմ ձեզ․ եթէ ամն, որ ունիցի, տացի․ եւ յայնմանէ որ ոչ ունիցի, եւ զոր ունիցի՝ բարձցի ՚ի նմանէ։ 27 *Բայց զթշնամիսն իմ զայնոսիկ․ որք ոչ կամէին զիս թագաւորել ՚ի վերայ նց, ածէք այսր, եւ 28 սպանէք առաջի իմ։ *Եւ իբրեւ զայս ասաց՝ գնաց յառաջ ելանել յԵմ։

Մտթ. 13. 12. Ղկ. 25.29. Մրկ. 4.25. Մր. 8.18.

ԻԿ

29 *Եւ եղեւ ‖ իբրեւ մերձեցաւ ՚ի բեթփագէ եւ ՚ի բեթանիայ մօտ ՚ի լեառնն, որ կոչի ձիթենեաց․ առաքեաց երկուս ‖ 30 յաշակերտաց իւրոց։ *Եւ ասէ․ երթայք ՚ի գեօղդ որ հանդէպ մեր կայ․ յոր իբրեւ մտանէք, գտանիցէք յաւանակ կապեալ․ յորում ոչ ՚ի մարդկանէ երբեք ոչ նստաւ․ լուծէք զնա, եւ 31 ածէք։ *Եւ եթէ ոք հարցանիցէ զձեզ՝ թէ ընդէ՞ր լուծանէք․ այսպէս ասասջիք ցնա․ թէ Տն պիտոյ է։ 32 *Իբրեւ չոգան, որք առաքեցանն, գտին որպէս ասացն ցնոսա․ կայր յաւանակն։ 33 *Եւ մինչդեռ լուծանէին զյաւանակն, ասեն տեարքն նր ցնոսա․ զի՞ 34 լուծանէք զյաւանակդ։ *Եւ նոքա 35 ասեն, Տն պիտոյ է։ *‖Եւ ածին զնա առ Յս․ եւ արկին զհանդերձս, եւ հեծուցին զՅս։ 36 *Եւ մինչդեռ երթայր, զհանդերձս իւրեանց տարածանէին զճանապարհաւն։ 37 *Եւ իբրեւ այն ինչ մերձ եղեւ ՚ի զառ ՚ի վայր լերինն ձիթենեաց՝ սկսաւ ամ բազմութիւն աշակերտացն ուրախութբ օրհնել զԱծ ՚ի ձայն մեծ վս ամ եղելոց 38 զօրութեանցն, զորս տեսին․ *Եւ ասէին, օրհնեալ որ գայ թագաւորդ յանուն Տն․ խաղաղութիւն յերկինս․ 39 եւ փառք ՚ի բարձունս։ *Եւ ոմանք ՚ի փարիսեցւոցն յամբոխէ անտի, ասեն ցնա․ վարդապետ, սաստեա՛ աշակերտացդ 40 քոց։ *Պատասխանի ետ, եւ ասէ․ ասեմ ձեզ․ զի եթէ դոքա լռեսցեն, 41 քարինքդ աղաղակեսցեն։ *Եւ իբրեւ մերձեցաւ՝ տեսեալ զքաղաքն՝ 42 ելաց ՚ի վերայ նր, եւ ասէ․ *Եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւն քո․ բայց այժմ ծածկեցաւ 43 յաչաց քոց։ *Զի եկեսցեն աւուրք ՚ի վերայ քո․ եւ պատեսցեն զքեւ թշնամիք քո պարիսպ․ եւ պաշարեսցեն զքեզ․ եւ նեղեսցեն զքեզ յամ կողմանց։ ‖ 44 *Եւ յատակեսցեն զքեզ․ եւ զորդիս քո ՚ի քեզ․ ‖ եւ ոչ թողուցուն զքար ՚ի քարի վերայ՝ յամի ՚ի քեզ՝ փոխանակ զի ոչ ծաներ զժամանակ այցելութեան 45 քոյ։ *‖Եւ մտեալ ՚ի տաճարն՝ սկսաւ հանել զաղաւնեվաճառսն, եւ ‖ զգնօղս․ եւ զսեղանս հատավաճառացն 46 ցրուեաց։ *Եւ ասէ ցնոսա․ գրեալ է, ‖ եւ եղիցի տուն իմ տուն աղօթից․ եւ դուք արարէք զդա այր աւազակաց։ ‖ 47 *Եւ ուսուցանէր զնոսա հանապազ ՚ի տաճարին․ իսկ քահանայապետքն

Մտթ. 21.1. Մրկ. 11.1. Յովհ. 12.14. Մտթ. 24.2. Մրկ. 13.2. Մտթ. 21.6. Մտթ. 21.12. Մրկ. 11.15. Եսայ. 56.7. Երեմ. 7.11.

եւ դպիրք՝ եւ գլխաւորք ժողովրդեանն խնդրէին զնա կորուսանել։
48 * Եւ ոչ գտանէին թէ զինչ արասցեն։ զի ժողովուրդն ամ կախեալ կային զնմանէ ՚ի լսել։

ԳԼ. Ի.

Լ.Բ. ‖ Մատթ. 21. 23. Մարկ. 11. 27.

1 Եւ ‖ եղեւ ՚ի միում աւուրց յայնցանէ մինչդեռ ուսուցանէր զժողովուրդն ՚ի տաճարի անդ՝ եւ աւետարանէր. հասին ՚ի վերայ քահանայապետքն եւ դպիրք ծերովքն հանդերձ։ 2 * Եւ ասեն ցնա՝ ասա՛ մեզ՝ որո՞վ իշխանութեամբ գործես դու զայդ. կամ՝ ո՞վ է որ ետ քեզ զայդ իշխանութիւն։ 3 * Պատասխանի ետ եւ ասէ ցնոսա. հարցից եւ ես զձեզ բան մի, եւ ասացէք ինձ։ 4 * Մկրտութիւն յօհաննու յերկնից էր եթէ ՚ի մարդկանէ։ 5 * Եւ նոքա խորհեցան ՚ի միտս իւրեանց եւ ասեն։ 6 * Եթէ ասեմք յերկնից, ասէ. իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. եւ եթէ ասեմք ՚ի մարդկանէ, ամ ժողովուրդն քարկոծ առնեն զմեզ. զի հաստատեալ է ՚ի միտս զյօհաննէ, թէ մարգարէ է։ 7 * Եւ պատասխանի ետուն չգիտել թէ ուստի իցէ։ 8 * Եւ Յս ասէ ցնոսա. եւ ոչ ես ասեմ ձեզ՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։

Լ.Գ. ‖ Եսայ. 5. 1. Երեմ. 2. 21. Մատթ. 21. 33. Մարկ. 12. 1.

9 * Սկսաւ ասել առ ժողովուրդն՝ զառակս զայս. ‖ այր ոմն տնկեաց այգի. եւ ետ զնա մշակաց. եւ ինքն գնաց ՚ի ճանապարհ ժամանակս բազումս։ 10 * Եւ ՚ի ժամու՝ առաքեաց առ մշակսն զծառայ. զի ՚ի պտղոյ այգւոյն տացեն նմա. եւ մշակքն գան հարին զնա. եւ արձակեցին ունայն։ 11 * Եւ յաւել միւս եւս ծառայ յղել. նոքա եւ զնա եւս գան հարին. անարգեցին, եւ առաքեցին ունայն։ 12 * Եւ յաւել զերրորդն առաքել. նոքա եւ զնա վիրաւորեցին. եւ հանին արտաքս։ 13 * Ասէ տէր այգւոյն՝ զի՞նչ արարից. առաքեցից զորդի իմ սիրելի. թերեւս ՚ի սմանէ պատկառեսցին։ 14 * Իբրեւ տեսին զնա մշակքն, խորհեցան ընդ միմեանս եւ ասեն, սա է ժառանգն. սպանցո՛ւք զսա. զի մեր լինիցի ժառանգութիւն։ 15 * Եւ հանին զնա արտաքս քան զայգին, եւ սպանին. արդ զի՞նչ արասցէ ընդ նս տէր այգւոյն։ 16 * Ո՛չ ապաքէն գայցէ եւ կորուսանիցէ զմշակսն զայնոսիկ. եւ տայցէ զայգին այլոց։ իբրեւ լուան, ասեն. քա՛ւ մի՛ լիցի։ 17 * Եւ նա հայեցեալ ՚ի նոսա ասէ. իսկ զի՞նչ իցէ այն, որ գրեալն է. թէ ‖ զվէմն, զոր անարգեցին շինօղք, նա եղեւ գլուխ անկեան։ 18 * Ամենայն որ ընդհարցի ընդ վէմն

‖ Սաղմ. 117. 22. Եսայ. 28. 16.

ընդ այս, խորտակեսցի. եւ յորոյ վերայ անկցի, հոսեսցէ զնա։ 19 * Եւ խնդրէին դպիրքն եւ քահանայապետք արկանել ՚ի նա ձեռս ՚ի նմին ժամու, եւ երկեան ՚ի ժողովրդենէն. զի գիտէին թէ առ նոսա ասաց զառակն զայն։

Մատթ. 21. 42. Գործ. 4. 11. Հռովմ. 9. 33. 1. Պետ. 2. 7.

20 * ‖ Եւ ապա սպասեցին, եւ առաքեցին դաւաճանս կեղծաւորեալս զանձինս առ արդարս ունել. զի ըմբռնեսցեն զնա բանիւք. առ ՚ի մատնել զնա պետութեան եւ իշխանութեան դատաւորին։ 21 * Հարցին ցնա եւ ասեն. վարդապետ՝ գիտեմք, զի ուղիղ խօսիս, եւ ուսուցանես, եւ ոչ առնուս ակն. այլ ճշմարտութեամբ զճանապարհն Այ ուսուցանես։ 22 * Արժա՞ն է մեզ կայսեր հարկս տալ՝ թէ ոչ։ 23 * Եւ նայեցեալ ընդ խորամանկութիւն նոցա, ասէ ցնս †։ 24 * Ցուցէք ինձ զդահեկանն։ եւ նոքա ցուցին։ եւ ասէ՝ զո՞յր պատկեր եւ գիր ունի. պատասխանի ետուն եւ ասեն, զկայսեր։ 25 * Եւ նա ասէ ցնոսա. ‖ երթա՛յք, տո՛ւք զկայսերն, կայսեր. եւ զԱյն, Այ։ 26 * Եւ ոչ կարացին զնա ըմբռնել բանիւք առաջի ժողովրդեանն. եւ զարմացեալ ընդ պատասխանին նորա՝ լռեցին։

‖ Մատթ. 22. 15. Մարկ. 12. 13. † զի՞ փորձէք զիս. ‖ Հռովմ. 13. 7.

Լ.Դ. ‖ Մատթ. 22. 23. Մարկ. 12. 18. Օր. 25. 5.

27 * ‖ Մատուցեալ ոմանք ՚ի սադուկեցւոցն, որք հակառակէին չլինել յարութեան։ 28 * Հարցին ցնա եւ ասեն. վարդապետ, մովսէս գրեաց մեզ. ‖ եթէ ուրուք եղբայր մեռանիցի, որոյ իցէ կին, եւ նա անորդի իցէ. զի առցէ եղբայր նր զկինն, եւ յարուսցէ զաւակ եղբօր իւրում։ 29 * Արդ՝ եօթն եղբարք էին. եւ առաջնոյն առեալ կին՝ մեռաւ անորդի։ 30 * Առ զնոյն եւ երկրորդն. մեռաւ եւ նա անորդի։ 31 * Առ զնա եւ երրորդն. նոյնպէս եւ եօթանեքին։ եւ ոչ թողին որդիս. 32 * Մեռաւ եւ կինն։ 33 * Արդ՝ ՚ի յարութեան ո՞ւմ ՚ի նոցանէ լինիցի կին. զի եօթանեքին կալան զնա կին։ 34 * Պատասխանի ետ նոցա Յս եւ ասէ. որդիք աշխարհիս այսորիկ կանայս առնեն, եւ արանց լինին։ 35 * Իսկ որք արժանի լինիցին այնմ աշխարհի հասանել՝ եւ յարութեանն որ ՚ի մեռելոց, ոչ կանայս առնեն. եւ ոչ արանց լինին։ 36 * Քանզի եւ ոչ մեռանել եւս կարեն. զի հաւասար հրեշտակաց են՝ եւ որդիք Այ. քանզի յարութեան որդիք են։ այլ զի յառնեն մեռեալք. 37 * Եւ մովսէս ցուցակեաց ՚ի մորենւոջն, ‖ որպէս ասէ զՏր Այ աբրահամու. եւ զԱյ իսահակայ. եւ զԱյ յակոբայ։ 38 * Եւ Այ չէ մեռելոց՝ այլ կենդանեաց. զի ամենեքին նմա կենդանիք են։ 39 * Պատասխանի ետուն ոմանք ՚ի դպրացն

‖ Ելք 3. 6.

գպրացն և ասեն. վարդապետ, բարւոք ասացեր ։ 40 * Եւ ոչ ևս ոք իշխէր հարցանել զնա՝ և ոչինչ ։

Լ.Ե

41 * Ասէ և առ նս. զիարդ ասեն զՔս թէ որդի է Դաւթի ։ 42 * Եւ ինքն Դաւիթ ասէ 'ի գիրս սաղմոսաց՝ ‖ ասաց Տր ցՏր իմ. նիստ ընդ աջմէ իմմէ ։ 43 * Մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ 44 * Իսկ արդ՝ եթէ Դաւիթ զնա Տր կոչէ՝ զիարդ որդի նր իցէ ։ 45 * Եւ լուիլ ամ ժողովրդեանն ասէ ցաշակերտսն ։ 46 * ‖ Զգոյշ լերուք 'ի դպրացն. որք կամին պատմուճանօք շրջիլ. և սիրեն ողջոյնս 'ի հրապարակս, և զնախաթոռս 'ի ժողովուրդս, և ըզբարձերէցս յընթրիս ։ 47 * Որք ուտեն զտունս այրեաց. և պատճառանօք յերկարեն զաղօթս. նոքա ընկալցին աւելի դատաստանս ։

‖ Սաղմ. 109.1. Մատ. 22.44. Մարկ. 12.36. ‖ Մատ. 23.6. Մարկ. 12.38. Ղուկ. 11.43.

## ԳԼ ։ ԻԱ ։

‖ Մարկ. 12.41.

1 Եւ ‖ հայեցեալ ետես զմեծատունս՝ որք արկանէին զտուրս իւրեանց 'ի գանձանակն ։ 2 * Ետես և զկին ոմն այրի աղքատ, որ էարկ անդր երկուս լումայս ։ 3 * Եւ ասէ՝ արդարև ասեմ ձեզ. զի այրին այն աղքատ՝ աւելի էարկ քան զամենեսին ։ 4 * Ամենեքին նոքա 'ի մթերից իւրեանց արկին յընծայսն այ. բայց նա 'ի կարօտութենէ իւրմէ զամ զկեանս իւր՝ զոր ունէր, էարկ ։

Լ.Զ

5 * Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ գեղեցիկ վիմօք և աշտարակօք զարդարեալ է՝ ասէ ։ 6 * Այդ ամենայն, զոր տեսանէք՝ ‖ եկեսցեն աւուրք՝ յորս ոչ թողցի այդր քար 'ի քարի վերայ, որ ոչ քակտեսցի ։ 7 * Հարցին զնա և ասեն. վարդապետ՝ երբ լինիցի այդ. և զինչ նշան իցէ՝ յորժամ այդ լինելոց իցէ ։ 8 * Եւ նա ասէ. զգոյշ կացէք. մի խաբիցիք. զի բազումք գայցեն յանուն իմ, և ասասցեն թէ ես եմ. և մերձեցաւ ժամանակ, մի երթայցէք զկնի նց ։ 9 * Եւ յորժամ լսիցէք պատերազմունս և խռովութիւնս՝ մի զարհուրիցիք. զի պարտ է նախ այնմ լինել. այլ ոչ առժամայն կատարած ։

‖ Մատ. 24.2. Մարկ. 13.2. Ղուկ. 19.44.

10 * Յայնժամ ասէ ցնոսա. յարիցէ ազգ յազգի վերայ. և թագաւորութիւն 'ի թագաւորութեն վերայ ։ 11 * Եւ շարժմունք մեծամեծք. և 'ի տեղիս տեղիս սովք, և սրածութիւնք. եղիցին արհաւիրք, և նշանք մեծամեծք յերկնից ։ 12 * Բայց յառաջ քան զայս ամ՝ մխեսցեն զձեռս իւրեանց 'ի ձեզ՝ և հալածեսցեն. և մատնեսցեն 'ի ժողովուրդս և 'ի բանտս. և տանիցին առաջի դատաւորաց և թագաւորաց վն անուան իմոյ ։ 13 * Եւ լինիցի ձեզ այն 'ի վկայութիւն ։ 14 * Արդ դիք 'ի սիրտս ձեր՝ մի յառաջագոյն կրթել տալոյ պատասխանի ։ 15 * Զի ես տաց ձեզ բերան. և իմաստութիւն. որում ոչ կարիցեն կալ հակառակ՝ կամ տալ պատասխանի ամ հակառակորդք ձեր ։ 16 * Մատնեսջիք և 'ի ծնողաց՝ և յեղբարց՝ և յազգականաց՝ և 'ի բարեկամաց. և սպանանիցեն 'ի ձէնջ ։ 17 * Եւ եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ ։ 18 * Եւ մազ մի 'ի գլխոյ ձերմէ ոչ կորիցէ ։ 19 * Եւ համբերութբ ձերով ստասջիք զոգիս ձեր ։ 20 * ‖ Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պատեալ զօրօք զԵրմ, յայնժամ գիտասջիք թէ մերձ է աւեր նորա ։ 21 * Յայնժամ որք 'ի Հրէաստանի իցեն, փախիցեն 'ի լերինս. և որք 'ի միջի նորա իցեն, խուսեսցեն. և որք 'ի գաւառս իցեն, մի մտցեն 'ի նա ։

‖ Դանիէ. 9.27. Մատ. 24.15. Մարկ. 13.14.

22 * Զի աւուրք վրէժխնդրութե են այնոքիկ՝ առ 'ի կատարելոյ ամ գրելոց ։ 23 * Բայց վայ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ. զի եղիցի տագնապ մեծ 'ի վր երկրի. և բարկութի ժողովրդեանն այնմիկ ։ 24 * Եւ անկցին 'ի սուր սուսերի. և գերեսցին յամ հեթանոսս. և Երմ եղիցի կոխան ազգաց՝ մինչև կատարեսցին ժամանակք հեթանոսաց ։ 25 * ‖ Եւ եղիցին նշանք յարեգական, և 'ի լուսինն, և յաստեղս. և յերկրի տագնապ հեթանոսաց՝ յահեղ բարբառոյ ծովու՝ և խռովութե ։ 26 * Ելանելոյ ոգւոց մարդկան յերկիւղէ, և 'ի կարծեաց եկելոց 'ի վր տիեզերաց. զի զօրութիւնք երկնից շարժեսցին ։ 27 * Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ ամպօք՝ զօրութբ և փառօք բազմօք ։ 28 * Եւ յորժամ սկսանիցի այս լինել՝ ամբարձջիք և բարձրացուցջիք զգլուխս ձեր. ‖ զի մերձ է փրկութի ձեր ։

‖ Եսայ. 13.10. Եզեկի. 32.7. Յովէլ. 3.15. Մատ. 24.29. Մարկ. 13.24. ‖ Հռով. 8.23.

29 * Եւ ասաց առակ մի նոցա. տեսէք զթզենին, և զամ ծառ ։ 30 * Յորժամ ցուցանիցեն զպտուղ իւրեանց, տեսանէք, և 'ի նոցանէ ճանաչէք թէ մերձ է ամառն ։ 31 * Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ՝ գիտասջիք, թէ մերձ է արքայութիւն Այ ։ 32 * Ամէն ասեմ ձեզ. թէ ոչ անցցէ ազգս այս, մինչև այս ամենայն լինիցի ։ 33 * Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ ոչ անցանիցեն ։ 34 * Զգոյշ լերուք անձանց. գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութբ և արբեցութբ՝ և հոգօք աշխարհականօք. և յանկարծակի հասանիցի 'ի վերայ ձեր օրն այն ։

35 * Զի իբրեւ զորոգայթ հասանիցէ 'ի վ՛ի ամենեցուն, որք բնակեալ են ընդ ամ երեսս երկրի։ 36 * Արթուն կացէք այսուհետեւ. յամենայն ժամ աղօթս արարէք. զի արժանի լինիջիք զերծանել յայնմ յամենայնէ, որ լինելոց է. եւ կալ առաջի որդւոյ մարդոյ։
37 * Եւ 'ի տուէ 'ի տաճարին ուսուցանէր. եւ զգիշերս ելեալ ագանիւր 'ի լերինն՝ որ կոչիւր Ձիթենեաց։ 38 * Եւ ամ ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա 'ի տաճարն լսել 'ի նմանէ։

## Գլ. ԻԲ.

[Ի:Է]

1 Մերձեցաւ ‖ տօն բաղարջակերացն՝ որ կոչիւր պասքա։ 2 * Եւ խնդրէին քահանայապետքն եւ դպիրքն՝ թէ որպէս սպանանիցեն զնա. բայց երկնչէին 'ի ժողովրդենէ անտի։ [‖ Մատթ. 26.2. Մարկ. 14.1.]
3 * ‖ Եմուտ սատանայ 'ի յուդայ 'ի կոչեցեալն իսկարիովտացի, որ էր 'ի թուոյ երկոտասանիցն։ [‖ Մատթ. 26. 14. Մարկ. 14. 10.] 4 * Չոգաւ՝ եդ բանս ընդ քահանայապետս՝ եւ ընդ դպիրս՝ եւ ընդ իշխանս ժողովրդեանն. զի մատնեսցէ զնա նոցա։ 5 * Եւ խնդացին, եւ խոստացան տալ նմա զարծաթ։ 6 * Եւ յանձն էառ. եւ խնդրէր պարապ մատնել զնա նոցա մեկուսի յամբոխէ անտի։ 7 * Եկն օր բաղարջակերացն, յորում օրէն էր զենուլ զպասեքն։
8 * Եւ առաքեաց զպետրոս, եւ զյովհաննէս՝ եւ ասէ. երթայք, պատրաստեցէք մեզ զպասեքն՝ զի կերիցուք. 9 * Եւ նոքա ասեն, ո՞ւր կամիս՝ զի պատրաստեսցուք։ 10 * Եւ ասէ ցն՛ա. ահա իբրեւ մտանիցէք 'ի քաղաքն, պատահեսցի ձեզ այր մի բարձեալ սափոր ջրոյ. երթիջիք զհետ նորա 'ի տունն, յոր մտանիցէ։ 11 * Եւ ասասջիք ցտանուտէր տանն, վարդապետն ասէ քեզ. ո՞ւր են վանքն իմ, յորում զպասեքն ուտիցեմ աշակերտօքս հանդերձ։ 12 * Եւ նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ. եւ անդ պատրաստեսջիք։
13 * Եւ գնացեալ գտին, որպէս եւ ասաց ն՛ց. եւ պատրաստեցին զպասեքն։
14 * ‖ Եւ իբրեւ ժամ եղեւ, բազմեցաւ, եւ երկոտասան առաքեալքն ընդ նմա։ [‖ Մատթ. 26. 20. Մարկ. 14.17.]
15 * Եւ ասէ ցնոսա. ցանկանալով ցանկացայ զայս պասեքս ուտել ընդ ձեզ՝ մինչեւ չարչարեալ իցեմ։ 16 * Բայց ասեմ ձեզ, թէ ոչ եւս կերիցից 'ի սմանէ՝ մինչեւ լցցի յարքայութեան Ա՛յ։
17 * Եւ ընկալեալ բաժակ՝ գոհացաւ, եւ ասէ. առէք զայդ՝ եւ բաժանեցէք 'ի ձեզ։ 18 * Ասեմ ձեզ՝ թէ յայսմհետէ ոչ արբից 'ի բերոյ որթոյ՝ մինչեւ եկեսցէ արքայութիւն Ա՛յ։ 19 * ‖ Եւ առեալ հաց գոհացաւ. եբեկ՝ եւ ետ նոցա՝ եւ ասէ. Այս է մարմին իմ, որ վասն բազմաց տուեալ. զայս արասջիք առ իմոյ յիշատակի։ [‖ 1. Կորն. 11. 24.] 20 * Նոյնպէս եւ զբաժակն յետ ընթրեացն էառ՝ եւ ասէ. Այս բաժակ է նոր ուխտ իմով արեամբ վասն բազմաց հեղլոյ։ 21 * ‖ Բայց ահաւասիկ ձեռն մատնչի իմոյ ընդ իս 'ի սեղանս։ [‖ Մատթ. 26. 21.]
22 * Եւ որդի մարդոյ, ‖ ըստ սահմանելոյն երթայ. բայց վա՜յ մարդոյն այնմիկ, յոյր ձեռն մատնիցի։ [Մարկ. 14. 20.] 23 * Եւ նոքա սկսան խնդրել ընդ միմեանս, թէ ո՞վ է 'ի նոցանէ՝ որ զայն գործելոց իցէ։ [Յովհ. 13.18.] 24 * Եւ եղեւ հակառակութիւն 'ի մէջ ն՛ց, թէ ո՞վ 'ի նոցանէ համարիցի մեծ։ [‖ Մարկ. 40.9.]
25 * Եւ նա ասէ ցն՛ա. ‖ թագաւորք ազգաց՝ տիրեն նոցա. եւ որք իշխենն ն՛ց՝ բարերարք կոչին։ [‖ Մատթ. 20.25.] 26 * Այլ դուք ո՛չ այնպէս. այլ որ մեծն է 'ի ձեզ՝ եղիցի իբրեւ զկրտսերն. եւ առաջնորդն իբրեւ զսպասաւորն։ [Մարկ. 10.42.] 27 * Ո՞վ է մեծ. բազմեալն եթէ սպասաւորն. ո՛չ ապաքէն բազմեալն. բայց ես եմ 'ի միջի ձերում իբրեւ սպասաւոր։ 28 * Եւ դուք էք՝ որք ցանդ կայիք ընդ իս 'ի փորձութիւնս իմ։ 29 * Եւ ես ուխտեմ ձեզ՝ որպէս եւ Հայր իմ ուխտեաց ինձ զարքայութիւն։
30 * Զի ուտիցէք, եւ ըմպիցէք 'ի սեղանն իմ յարքայութեան իմում. եւ նստիցիք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգն Իլի։ 31 * Եւ ասէ Տ՛ր. սիմոն, սիմոն. ահա սատանայ խնդրեաց 32 զձեզ խարբալել իբրեւ զցորեան։ * Այլ ես աղաչեցի վասն քո՝ զի մի՛ պակասեսցին հաւատք քո. եւ դու երբեմն դարձցիս, եւ հաստատեսցես զեղբարս 33 քո։ * Եւ նա ասէ ցնա. Տ՛ր, ընդ քեզ պատրաստ եմ եւ 'ի բանտ եւ 'ի մահ 34 երթալ։ * ‖ Եւ նա ասէ ցնա. ասեմ քեզ պետրէ. չիցէ այսօր հաւու խօսեալ՝ մինչ երիցս ուրասցիս զիս չգիտել։ [‖ Մատթ. 26.34. Մարկ. 14.30.] 35 * Եւ ասէ ցն՛ա. ‖ յորժամ առաքեցի զձեզ առանց քսակի՝ եւ մախաղի ‖ եւ կօշկաց՝ միթէ կարօտացա՞յք իմիք. [‖ Մատթ. 10. 9.] 36 * Եւ նոքա ասեն, եւ ո՛չ իմիք. ապա ասէ. այլ այժմ որ ունի զքսակ՝ բարձցէ, նոյնպէս եւ մախաղ. եւ որ ո՛չ ունի՝ վաճառեսցէ զձորձս իւր՝ եւ գնեսցէ 37 իւր սուսեր։ * Բայց ասեմ ձեզ. զի այս եւս որ գրեալ է՝ պարտ է զի կատարեսցի յիս, ‖ թէ ընդ անօրէնս համարեցաւ. զի որ վ՛ն իմ ինչ է՝ վճարեալ է։ [‖ Եսայ. 53.12.] 38 * Եւ նոքա ասեն. Տ՛ր՝ ահաւասիկ են ‖ աստ երկու սուրք։ Եւ նա ասէ ցնոսա. 39 բաւական են։ * ‖ Եւ ելեալ գնաց ը՛ս սովորութեան 'ի լեառն Ձիթենեաց. գնացին զհետ նորա եւ աշակերտքն։ [‖ Մատթ. 26. 36. Մարկ. 14.32. Յովհ. 18.1.] 40 * Իբրեւ եհաս 'ի տեղին, ասէ ցնոսա.

յա-

յաղօթս կացէք չմտանել 'ի փորձու-
թիւն։ *Եւ ինքն մեկնեցաւ 'ի նոցա- 41
նէ իբրեւ քարընկեց մի. եդ ծունր,
կայր յաղօթս։ *Եւ ասէր՝ Հայր եթէ 42
կամիս՝ անցո՛ զբաժակս զայս յինէն.
բայց ո՛չ իմ կամք՝ այլ քո լիցի։

Մատթ. 26. 39. Մարկ. 14.35.



*Եւ երեւեցաւ նմա հրեշտակ յերկ- 43
նից, եւ զօրացուցանէր զնա։ Եւ էր 'ի
տագնապի. եւ մտադիւրութբ եւս կայր
յաղօթս։ *Եւ հոսէին 'ի նմանէ քր- 44
տունք իբրեւ զկայլակս արեան, ոլոռն,
ոլոռն, հեղեալ յերկիր։ *Եւ յարու- 45
ցեալ յաղօթիցն՝ եկն առ աշակերտսն՝
եւ եգիտ զնոսա 'ի քուն 'ի տրտմուէն։
*Եւ ասէ ցնոսա. զի՞ ննջէք. արի՛ք, 46
կացէք յաղօթս՝ զի մի՛ մտանիցէք 'ի
փորձութիւն։ *Եւ մինչդեռ խօսէր, 47
ահաւասիկ ամբոխ. եւ որ կոչիւրն յու-
դա՝ մի յերկոտասանիցն, առաջնորդէր
նց. իբրեւ մերձեցաւ առ Յս համբու-
րեաց զնա. քանզի զայն նշան տուեալ
էր նց. թէ ընդ որում ես համբուրե-
ցից, նա է՝ զնա ունիցիք։ *Ասէ ցնա 48
Յս. յուդա, համբուրելո՞վ մատնես
զորդի մարդոյ։ *Իբրեւ տեսին, որք 49
զնովաւն էին՝ որ ինչ եղեւ, ասեն ցնա.
Տր, հարցուք զնոսա սրով։
*Եւ եհար միոմն 'ի նոցանէ զքահա- 50
նայապետին ծառայ. եւ 'ի բաց եհան
զաջոյ ունկն նր։ *Պատասխանի ետ 51
Յս եւ ասէ. թո՛յլ տուք մինչեւ ցայդ-
վայր։ եւ մատուցեալ յունկն՝ բժշկեաց

Մատթ. 26.47. Մարկ. 13.42. Յոհ. 18. 3.

52 զնա։ *Եւ ասէ ցեկեալսն 'ի վերայ
նր ցքահանայապետսն՝ եւ ցիշխանսն
տաճարին՝ եւ ցծերս. իբրեւ 'ի վր աւա-
զակի ելիք սուսերօք եւ բրօք։
53 *Հանապազ ընդ ձեզ էի 'ի տաճարին,
եւ ո՛չ ձգեցիք ձեռս յիս. այլ այս է
ձեր ժամ, եւ իշխանութիւն խաւարի։
54 *Եւ կալեալ զնա՝ ածին, եւ մուծին
'ի տուն քահանայապետին. եւ պետրոս
երթայր զկնի նորա հեռագոյն։
55 *Իբրեւ լուցին զկրակ 'ի մէջ գաւթին,
եւ նստան շուրջ, նստաւ եւ պետրոս 'ի
56 մէջ նոցա։ *Ետես զնա աղախին ոմն
զի նստէր առ լոյսն. հայեցաւ ընդ նա
եւ ասէ. եւ սա ընդ նմա էր՝ որք ընդ
57 նմա էին։ *Իսկ պետրոս ուրացաւ եւ
ասէ. ո՛չ գիտեմ զնա կին դու։
58 *Եւ յետ սակաւ միոյ այլ ոմն ետես
զնա եւ ասէ. եւ դու 'ի նոցանէ ես։ Եւ
պետրոս ասէ՝ այր դու չեմ 'ի նոցանէ։
59 *Եւ իբրեւ ժամ մի էանց 'ի վր, այլ
ոմն վիճէր եւ ասէր. ստոյգ եւ սա ընդ
նմա էր. քանզի գալիլեացի է։
60 *Ասէ պետրոս. այր դու, չգիտեմ
զինչ խօսիդ։ Եւ առժամայն մինչդեռ
61 զայն ասէր՝ խօսեցաւ հաւ։ *Դարձաւ
Տր, եւ հայեցաւ 'ի պետրոս. եւ յիշեաց
պետրոս զբանն Տն, զոր ասաց ցնա՝
մինչչեւ հաւու խօսեալ իցէ, երիցս
62 ուրասցիս չգիտել զիս։ *Եւ ելեալ
արտաքս՝ ելաց դառնապէս։
63 *Եւ արքն, որք պահէին զնա, այպն
առնէին զնովաւ. եւ հարկանէին։
64 *Ծածկէին զերեսս նորա եւ տան-
ջէին. եւ հարցանէին ցնա եւ ասէին.
մարգարէա՛ց՝ ո՞վ է՝ որ եհարն զքեզ։
65 *Եւ այլ բազում ինչ հայհոյութբ
66 խօսէին 'ի նա։ *Եւ իբրեւ այգ եղեւ,
ժողովեցաւ ծերակոյտ ժողովրդեանն,
քահանայապետքն, եւ դպիրք. եւ հա-
նին, ածին զնա յատեանն իւրեանց.
եւ ասեն, թէ դու ես Քսն, ասա՛ մեզ։
67 *Ասէ ցնոսա. եթէ ասացից ձեզ՝ սա-
68 կայն ո՛չ հաւատայք։ *Եւ եթէ հար-
ցից ինչ զձեզ՝ չտայք ինձ պատասխա-
69 նի, կամ արձակիցէք։ *Բայց յայսմ
հետէ նստցի որդի մարդոյ ընդ աջմէ
70 զօրութեն Այ։ *Եւ ասեն ամենե-
քեան. ուրեմն դու ես Որդին Այ. Եւ
նա ասէ ցնոսա. դուք ասէք թէ ես եմ։
71 *Եւ նոքա ասեն, զի՞նչ եւս պիտոյ է
մեզ վկայութիւն. զի մեզէն իսկ լուաք
'ի բերանոյ դորա։

Մատթ. 26. 57. Մարկ. 14.53. Յոհ. 18.24. Մատթ. 26. 69. Մարկ. 14.66. Յոհ. 18. 25. Յոհ. 18.26. Մատթ. 26.34. Մարկ. 14.30. Յոհ. 13.38. Մատթ. 27.1. Մարկ. 15.1. Յոհան. 18. 28.

ԳԼ. ԻԳ։

1 Եւ յարուցեալ ամ բազմութիւն նո-
ցա, ածին զնա առ պիղատոս։
2 *Եւ սկսան չարախօս լինիլ զնմանէ եւ
ասել.

ասել. գտաք զսա, զի թիւրէր զազգս մեր: և արգելոյր ՚ի տալոյ հարկս կայսեր: և ասէր զանձնէ՝ եթէ Ք̃սն իցէ թագաւոր: 3 * Իսկ պիղատոս եհարց զնա և ասէ. դու ես թագաւորն հրէից: Նա պատասխանի ետ նմա և ասէ. դու ասացեր: 4 * Ասէ պիղատոս ցքահանայապետսն, և ցժողովուրդսն: չգտանեմ ինչ վնաս յառն յայսմիկ: 5 * Եւ նոքա պնդէին և ասէին, եթէ խռովէ զժողովուրդս. ուսուցանէ ընդ ամ̃ հրէաստան, սկսեալ ՚ի գալիլեէ մինչև ցայսր: 6 * Իսկ պիղատոս իբրև լուաւ զգալիլեէ, եհարց եթէ գալիլեացի իցէ այրն: 7 * Եւ իբրև գիտաց եթէ յիշխանութ̃է հերովդէի է, ետ տանել զնա առ հերովդէս: քանզի և նա յե̃մ էր յաւուրսն յայնոսիկ:

Մատ. 22. 21. Մարկ. 12. 17. Մատ. 27. 11. Մարկ. 15. 2. Յոհա. 18. 33.



8 * Եւ հերովդէս իբրև ետես զՅ̃ս, ուրախ եղև յոյժ: զի ցանկայր ՚ի բազում ժամանակաց տեսանել զնա: քանզի լսէր բազում անգամ զնմանէ: և ակն ունէր նշան ինչ լեալ՝ տեսանել ՚ի նմանէ: 9 * Հարցանէր զնա բանիւք բազմօք. և նա ոչինչ ետ նմա պատասխանի: 10 * Կային քահանայապետքն և դպիրք՝ և պնդագոյնս չարախօսէին զնմանէ: 11 * Արհամարհեաց զնա և հերովդէս հանդերձ իւրօք զօրականօքն: և այպն արարեալ՝ եարկ զնովաւ հանդերձս սպիտակս. և ետ տանել անդրէն առ պիղատոս: 12 * Եւ եղեն բարեկամք պիղատոս և հերովդէս յաւուրն յայնմիկ. քանզի յառաջ թշնամիք էին միմեանց:

13 * Կոչեաց պիղատոս զքհանայապետսն, 14 և զիշխանս, և զժողովուրդն: * Եւ ասէ ցն̃ս: ածիք, մատուցիք ինձ զայրս զայս իբրև զխոտորեցուցիչ ժողովրդեանն. և ահաւասիկ առաջի ձեր դատեցի, և վնաս ինչ ոչ գտի յառն յայսմիկ՝ զորոյ դուք չարախօսէքդ զդմանէ: 15 * Այլ և ոչ հերովդէս, քանզի ետու տանիլ զդա առ նա: և արդ ոչինչ մահու արժանի է գործեալ դորա: 16 * Խրատեցից զդա, և արձակեցից: 17 * Օր հարկ էր մի մի ըստ տօնի արձակել նց̃: 18 * Եւ նոքա աղաղակէին ամ̃ բազմութբ̃ն և ասէին. բարձ զդա՝ և արձակեա մեզ զբարաբբայ: 19 * Որ էր վս̃ խռովութե̃ իրիք եղելոյ ՚ի քաղաքին և սպանութե̃ մտեալ ՚ի բանտ: 20 * Դարձեալ պիղատոս սկսաւ խօսիլ: 21 քանզի կամէր արձակել զՅ̃ս: * Եւ նք̃ անդրէն աղաղակէին և ասէին. ՚ի խաչ հան զդա: 22 * Եւ նա երիցս ասէ ցնոսա. զի՞նչ չար արար սա: ոչինչ վնաս մահու գտի ՚ի սմա: խրատեցից զսա, և արձակեցից: 23 * Եւ նոքա ստիպէին մեծաձայն՝ և խնդրէին զնա ՚ի խաչ հանել: և զօրանային բարբառք նց̃ և քահանայապետիցն: 24 * Եւ պիղատոս հաւանեցաւ առնել զհայցուածս նց̃: 25 * Արձակեաց նց̃ զբարաբբայն. զոր վս̃ խռովութե̃ և սպանութե̃ արկեալ էր ՚ի բանտ՝ զոր և խնդրէինն իսկ: և զՅ̃ս

Յոհա. 18. 38. և 19. 4. Մատ. 27. 23. Մարկ. 15. 14.



մատ

Մատթ. 27. 32. Մարկ. 15.21.

մատնեաց կամաց նոցա։ 26 *Իբրեւ տանէին զնա՝ ըմբռնեցին զոմն սիմօն կիւրենացի՝ որ գայր յանդէ. եդին ՚ի վերայ նորա զխաչն բերել զկնի Յիսուսի։

27 *Եւ երթայր զհետ նորա բազմութիւն ժողովրդեանն, եւ կանանց. որք կոծէին, եւ աշխարէին զնա։ 28 *Դարձաւ Յիսուս եւ ասէ ցնոսա. դստերք երուսաղէմի, մի լայք ՚ի վերայ իմ, այլ լացէք ՚ի վերայ անձանց եւ ՚ի վերայ որդւոց ձերոց։ 29 *Զի եկեսցեն աւուրք, յորս ասիցեն. թէ երանի ամլոց՝ եւ որովայնից՝ որք ոչ ծնան. եւ ստեանց, որք ոչ դիեցուցին։ 30 *Յայնժամ սկսանիցեն ասել լերանց՝ թէ անկերուք ՚ի վերայ մեր. եւ բլրոց՝ թէ ծածկեցէք զմեզ։

Եսայ. 2. 19. Ովսէ. 10.8. Յայտ. 6. 16.

31 *Զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի։ 32 *Ածին եւ այլ երկուս չարագործս, սպանանել ընդ նմա։ 33 *Իբրեւ չոգան ՚ի տեղին կոչեցեալ գագաթն. անդ հանին զնա ՚ի խաչ. եւ զչարագործսն զոմն ընդ աջմէ՝ եւ զոմն ընդ ձախմէ խաչեցին։

Մատթ. 27. 33. Մարկ. 15.22. Յօհ. 19. 17.

34 *Եւ Յիսուս ասէ. Հայր, թող դոցա. զի ոչ գիտեն՝ զինչ գործեն. եւ ՚ի բաժանել զհանդերձս նորա՝ արկին վիճակս։ 35 *Եւ կայր ժողովուրդն հայեցեալ. անդոսնէին զնա եւ իշխանքն հանդերձ նոքօք՝ եւ ասէին. զայլս ապրեցոյց, ապրեցուսցէ եւ զանձն եթէ դա է Քրիստոսն, Որդի Աստուծոյ ընտրեալն։ 36 *Այպն առնէին զնա եւ զինուորքն. եկեալ առաջի՝ մատուցանէին նմա քացախ։ 37 *Եւ ասէին. եթէ դու ես թագաւորն հրէից՝ փրկեա զանձն քո։ 38 *Եւ էր գիր գրեալ ՚ի վերայ նորա. յունարէն, եւ դաղմատերէն, եւ եբրայեցերէն գրով, եթէ սա է արքայն հրէից։

39 *Իսկ միոյն ՚ի կախելոց չարագործացն հայհոյէր զնա, եւ ասէր. ոչ դու ես Քրիստոսն. փրկեա զանձն քո, եւ զմեզ։

եթէ դու ես

40 *Պատասխանի ետ ընկերն սաստելով նմա, եւ ասէ. չերկնչիս դու յԱստուծոյ՝ զի ՚ի նմին պատժի կաս։ 41 *Եւ մեք յիրաւի, զի արժանի՝ որոց գործեցաքն՝ առնումք զհատուցումն. եւ սա ապիրատ ինչ ոչ գործեաց։ 42 *Եւ ասէ ցՅիսուս. յիշեա զիս Տէր՝ յորժամ գայցես արքայութեամբ քով։ 43 *Եւ ասէ ցնա Յիսուս. ամէն ասեմ քեզ. այսօր ընդ իս լիցես ՚ի դրախտին։ 44 *Եւ էր իբրեւ վեցերորդ ժամ. եւ խաւար եղեւ ՚ի վերայ ամենայն երկրի մինչեւ ցիններորդ ժամ։ խաւարեցաւ արեգակն։ 45 *Եւ հերձաւ վարագոյր տաճարին ընդ մէջ։ 46 *Եւ կարդաց Յիսուս ՚ի ձայն մեծ՝ եւ ասէ. Հայր՝ ՚ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ։ զայս իբրեւ ասաց՝ եհան զոգի։

Սաղմ. 30.6.

47 *Եւ տեսեալ հարիւրապետին՝ որ ինչ եղեն՝ փառաւոր արար զԱստուած՝ եւ ասէ. արդարեւ այրս այս արդար էր։ 48 *Եւ ամենայն ժողովուրդն, որք եկեալ էին, եւ տեսանէին զտեսիլն զայն՝ եւ զգործ, բաղխէին զկուրծս՝ եւ դառնային։

49 *Կային եւ ամենայն ծանօթքն նորա ՚ի հեռաստանէ. եւ կանայք, որք եկեալ էին զհետ նորա ՚ի գալիլեէ՝ տեսանէին զայն։ 50 *Եւ ահա այր մի անուն յոսէփ, որ էր նախարար՝ այր բարեգործ եւ արդար։ 51 *Սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս եւ ընդ գործս նոցա. յարեմաթեայ քաղաքէ հրէից. որ եւ ինքն իսկ ակնունէր արքայութեան Աստուծոյ։

Մատթ. 27. 57. Մարկ. 15. 43. Յօհ. 19. 38.

52 *Սա մատուցեալ առ պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի։

53 *Եւ իջուցեալ զնա՝ պատեաց պատանաւ կտաւոյ. եւ եդ ՚ի կռածոյ գերեզմանին. ուր չէր բնաւ զոք եդեալ։

54 *Եւ օրն էր ուրբաթ. եւ շաբաթ լուսանայր։ 55 *Եւ երթային զհետ նորա կանայք՝ որք եկեալ էին ընդ նմա ՚ի գալիլեէ. տեսին զգերեզմանն, եւ որպէս եդաւ մարմին նորա։

56 *Դարձան, եւ պատրաստեցին խունկս եւ իւղս. եւ ՚ի շաբաթուն հանգարտեցին վասն պատուիրանին։

## ԳԼ. ԻԴ.

Մատթ. 28.1. Մարկ. 16.2. Յօհ. 20.1.

1 Բայց ՚ի միաշաբաթուն վաղքաջ ընդ առաւօտն եկին ՚ի գերեզմանն. բերին զխունկսն, զոր պատրաստեցին՝ եւ այլ կանայք ընդ նոսա։ 2 *Եւ գտին զվէմն թաւալեցուցեալ ՚ի գերեզմանէ անտի։ 3 *Եւ մտեալ ՚ի ներքս՝ ոչ գտին զմարմինն Տեառն Յիսուսի։

4 *Եւ եղեւ ընդ հիանալն նոցա վասն այնորիկ, եւ ահա արք երկու հասին առ նոսա ՚ի հանդերձս լուսաւորս։

5 *Եւ իբրեւ զահի հարան՝ եւ խոնարհեցուցին զերեսս իւրեանց յերկիր. ասեն ցնոսա. զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս։ 6 *Չէ աստ, այլ յարեաւ. յիշեցէք որպէս խօսեցաւ ընդ ձեզ մինչ էր ՚ի գալիլեա։ 7 *Եւ ասէր թէ պարտ է որդւոյ մարդոյ մատնիլ ՚ի ձեռս մարդոց մեղաւորաց. եւ ՚ի խաչ ելանել՝ եւ յերրորդ աւուր յառնել։

Մատթ. 16. 21. Մարկ. 8. 31. Վեր. 9. 22.

8 *Եւ յիշեցին զբանսն նորա։

9 *Եւ դարձան, պատմեցին զայս ամենայն մետասանիցն, եւ այլոցն ամենեցուն։

10 *Եւ էին մարիամ մագդաղենացի. եւ յօհաննա, եւ մարիամ յակոբայ, եւ այլք ընդ նոսա, որք պատմեցին զայս առաքելոցն։ 11 *Եւ երեւեցան առաջի նոցա շաղփաղփութիւն բանք նոցա՝ եւ չհաւատային նոցա։ 12 *Բայց պետրոս յարուցեալ ընթացաւ ՚ի գերեզմանն.

եւ

և հայեցեալ տեսանէ զկտաւսն լոկ, զի կային։ և գնաց ընդ միտս զարմացեալ թէ զինչ եղև։ 13 *‖ Եւ ահա երկուք 'ի նոցանէ երթային 'ի նմին աւուր 'ի գեօղ մի, որ հեռի էր յերուսաղեմէ վաթսուն ասպարիսաւ։ և էր անուն նորա Էմմաւուս։

‖ Մարկ. 16. 12. 'յերուսաղեմէ վաթսուն ասպարիսաւ.

14 *Եւ նոքա խօսէին ընդ միմեանս վասն ամենայնի անցիցն անցելոց։ 15 *Եւ եղև ընդ խօսիլն նոցա և ընդ վիճել, և ինքն իսկ Յիսուս մերձեցաւ և երթայր ընդ նոսա։ 16 *Եւ նոցա աչք կալեալ էին առ 'ի չճանաչելոյ զնա։ 17 *Եւ ասէ ցնոսա։ զի՞նչ են բանքդ՝ վասն որոյ վիճիք ընդ միմեանս՝ մինչդեռ երթայք, և տրտմեալ էք։ 18 *Պատասխանի ետ միոյն 'ի նոցանէ՝ որում անուն էր Կղէոպաս, և ասէ ցնա։ դու միայն կաս յերուսաղէմ, որ ոչ գիտացեր՝ զինչ գործեցաւ 'ի նմա յաւուրս յայսոսիկ։ 19 *Եւ ասէ ցնոսա. զի՞նչ։ և նոքա ասեն։ զՅիսուսէ նազովրեցւոյ. որ եղև այր մարգարէ, հզօր արդեամբք և բանիւք՝ առաջի Աստուծոյ, և ամենայն ժողովրդեանն։

20 *Որպէս մատնեցին զնա քահանայապետքն՝ և իշխանքն մեր 'ի դատաստան մահու՝ և հանին զնա 'ի խաչ։ 21 *Մեք ակն ունէաք՝ թէ նա է՝ որ փրկելոց իցէ զիսրայէլ։ այլև հանդերձ այսու ամենայնիւ, այս երրորդ օր է՝ յորմէ հետէ այն գործեցաւ։ 22 *Այլև կանայք ոմանք 'ի մէնջ զարմացուցին զմեզ. որք կանխեալք ընդ առաւօտս՝ չոգան 'ի գերեզմանն։ 23 *Եւ ոչ գտին զմարմին նորա. եկին, և ասեն. թէ և տեսիլ ևս հրեշտակաց տեսին, որք ասէին զնմանէ՝ թէ կենդանի է։ 24 *Եւ գնացին ոմանք 'ի մէնջ 'ի գերեզմանն. և գտին նոյնպէս՝ որպէս և կանայքն ասացին։ բայց զնա ոչ տեսին։ 25 *Եւ նա ասէ ցնոսա։ ո՜վ անմիտք և հեղգասիրտք առ 'ի հաւատալ յամենայնի, զոր խօսեցան մարգարէքն։ 26 *Ո՞չ զնոյն պարտ էր չարչարել Քրիստոսի, և մտանել 'ի փառս իւր։ 27 *Եւ սկսեալ 'ի Մովսիսէ՝ և յամենայն մարգարէից՝ մեկնէր նոցա որ ինչ յամենայն գիրս գրեալ է զնմանէ։ 28 *Իբրև մերձեցան 'ի գեօղն՝ յոր երթային, և նա պատճառէր հեռագոյն ևս ուրեք երթալ։ 29 *Եւ բռնադատեցին զնա՝ և ասեն. առ մեզ ագիր. զի ընդ երեկս է՝ և տարաժամեալ է օրս։ և եմուտ ագանիլ անդ ընդ նոսա։ 30 *Եւ եղև 'ի բազմիլն նորա ընդ նոսա. առեալ զհացն՝ օրհնեաց՝ եբեկ՝ և ետ նոցա։

31 *Եւ նոցա բացան աչք՝ և ծանեան զնա։ և նա եղև 'ի նոցանէ աներևոյթ։ 32 *Եւ ասեն ցմիմեանս. ո՞չ իսկ և սիրտք մեր ջեռեալ էին 'ի մեզ՝ մինչ խօսէրն ընդ մեզ զճանապարհայն. և որպէս բանայր մեզ զգիրս։ 33 *Եւ յարուցեալ նոյն ժամայն՝ դարձան յերուսաղէմ. և գտին ժողովեալ զմետասանսն. և զորս ընդ նոսայն էին։ 34 *Եւ ասեն թէ արդարև յարեաւ Տէր՝ և երևեցաւ Սիմօնի։

35 *Եւ նոքա պատմէին. որ զճանապարհայն։ և թէ զիարդ ետ ծանօթս նոցա 'ի բեկանել հացին։ 36 *‖ Մինչդեռ զայս խօսէին, ինքն իսկ Յիսուս եկաց 'ի մէջ նոցա՝ և ասէ ցնոսա։ խաղաղութիւն ընդ ձեզ. ես Յիսուս եմ, մի երկնչիք։ 37 *Եւ զահի հարեալ երկնչէին. և համարէին զոգի ինչ տեսանել։ 38 *Եւ ասէ ցնոսա։ զի՞ խռովեալ էք. և ընդէ՞ր խորհուրդք ելանեն 'ի սիրտս ձեր։ 39 *Տեսէք զձեռս իմ և զոտս. զի ես նոյն եմ։ շօշափեցէք զիս՝ և տեսէք։ զի ոգի՝ մարմին և ոսկերս ոչ ունի, որպէս զիս տեսանէք՝ զի ունիմ։

‖ Մարկ. 16. 14. Յովհ. 20. 19.

40 *Եւ զայս ասացեալ՝ եցոյց նոցա զձեռսն և զոտսն։ 41 *Եւ մինչդեռ տակաւին չհաւատային 'ի խնդութենէն, և զարմացեալ էին։ ասէ ցնոսա. ունի՞ք ինչ կերակուր աստ։ 42 *Եւ նոքա ետուն նմա ձկան խորովեցելոյ մասն. և խորիսխ մեղու։ 43 *Եւ էառ՝ եկեր առաջի նոցա. և զմնացորդսն ետ նոցա, 44 *Եւ ասէ՝ այս բանք են, զոր խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ ձեզն էի. թէ պարտ է լնուլ ամենայն գրելոցն յօրէնսն Մովսիսի, և 'ի մարգարէս, և 'ի սաղմոսսն վասն իմ։

45 *Յայնժամ եբաց զմիտս նոցա իմանալ զգիրս։ 46 *Եւ ասէ ցնոսա. ‖ թէ այսպէս պարտ էր չարչարել Քրիստոսի։ և յառնել 'ի մեռելոց յաւուր երրորդի. և քարոզել յանուն նորա ապաշխարութիւն, և թողութիւն մեղաց յամենայն ազգս՝ սկսեալ յերուսաղեմէ։ 47 *‖ Եւ դուք էք վկայք բանիցս այսոցիկ։ 48 *‖ Եւ ահա ես առաքեմ զաւետիս Հօր իմոյ 'ի ձեզ. և դուք ‖ նստարուք 'ի քաղաքիս յերուսաղէմ. մինչև զգենուցուք զզօրութիւն 'ի բարձանց։

49 *Եհան զնոսա մինչև 'ի բեթանիայ. և ամբարձեալ զձեռս իւր՝ օրհնեաց զնոսա։ 50 *‖ Եւ եղև յօրհնելն նորա զնոսա, մեկնեցաւ 'ի նոցանէ. և վերացաւ յերկինս։ 51 *Եւ նոքա երկիր պագեալ նմա դարձան յերուսաղէմ ուրախութեամբ մեծաւ։ 52 *Եւ էին հանապազ 'ի տաճարին, գովէին, և օրհնէին զԱստուած.

Ամէն։

‖ Գործ. 1. 8. ‖ Յովհ. 14. 26. ‖ Մարկ. 16. 19. Գործ. 1. 9.



Յաշխարհի էր, եւ աշխարհ նովաւ եղեւ, եւ աշխարհ զնա ոչ ծանեաւ: Յոհ. 1. 10:



Ահաւասիկ գառն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի: Յոհ. 1. 29:

# ՍՐԲՈՅ ԱՒԵՏԱՐԱՆԻՍ
# ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ
# ԸՍՏ ՅՕՀԱՆՆՈՒ

## Գլուխ Առաջներորդ:



ՍԿԶԲԱՆԷ ԷՐ 1 բանն. եւ բանն էր առ Այ. եւ Այ էր բանն: *Նա էր 'ի սկզբանէ առ Այ: 2 *Ամ ինչ նովաւ 3 եղեւ. եւ առանց նր եղեւ եւ ոչինչ՝ որինչ եղեն: *Նովաւ կեանք էր. եւ կեանքն 4 էր լոյս մարդկան: *Եւ լոյսն 'ի խաւարի 5 անդ լուսաւորէ: եւ խաւար նմա ոչ եղեւ հասու: *Եղեւ այր մի առաքեալ յԱյ. 6 անուն նմա յօհաննէս: *Սա եկն 'ի վկայութիւն՝ զի վկայեսցէ 7 վս լուսոյն. զի ամենեքին հաւատասցեն նովաւ: *Ոչ էր նա լոյսն. այլ 8 Զի

Մատթ. 3. 1. Մարկ. 1. 2.

9 զի վկայեսցէ վս լուսոյն: *Էր լոյսն ճշմարիտ. որ լուսաւոր առնէ զամ մարդ՝ որ գալոց է յաշխարհ: 10 *Յաշխարհի էր. եւ աշխարհ նովաւ եղեւ. եւ աշխարհ զնա ոչ ծանեաւ: 11 *Յիւրսն եկն. եւ իւրքն զնա ոչ ընկալան: 12 *Իսկ որք ընկալանն զնա, ետ նց իշխանութիւն որդիս Այ լինել. որոց հաւատասցեն յանուն նորա: 13 *Ոյք ոչ յարենէ. եւ ոչ 'ի կամաց մարմնոյ՝ եւ ոչ 'ի կամաց առն. այլ յԱյ ծնան: 14 *Եւ բանն մարմին եղեւ՝ եւ բնակեաց 'ի մեզ: եւ տեսաք զփառս նորա. զփառս իբրեւ զմիածնի առ 'ի Հօրէ, լի շնորհօք եւ ճշմարտութբ: 15 *Յօհաննէս վկայեաց վս նր. աղաղակեաց եւ ասէ: սա՛ է՝ զորմէ ասէի, որ զկնի իմ գալոցն էր՝ առաջի իմ եղեւ. 16 զի նախ քան զիս էր: *Եւ 'ի լրութէ անտի նր՝ մեք ամենեքին առաք, շնորհս

Յոհ. 3. 19. Եբրայ. 11. 3. Մատթ. 1. 16. Կող. 2. 7. 1. Տիմ. 6. 17.

17 փոխանակ շնորհաց։ * Զի օրէնքն ՚ի ձեռն Մովսէսի տուան։ շնորհք և ճշմարտութիւն ՚ի ձեռն Յի Քի եղեն։
18 * Զած ոչ ոք ետես երբեք. բայց միածին որդին որ է ՚ի ծոց հօր, նա պատմեաց։
19 * Եւ այս է վկայութիւն յօհաննու, յորժամ առաքեցին առ նա հրէայքն յերուսաղէմէ քահանայս և ղևտացիս, զի հարցցեն ցնա՝ թէ դու ո՞ ես։
20 * Եւ խոստովան եղև, և ոչ ուրացաւ. խոստովան եղև, թէ ես ոչ եմ Քն։
21 * Եւ հարցին ցնա, իսկ ո՞վ ես դու՝ եղիա ես. և ասէ, ոչ եմ։ իսկ մարգարէն ես դու. պատասխանի ետ՝ թէ ոչ։
22 * Իսկ ասեն ցնա՝ դու ո՞վ ես. զի պատասխանի տարցուք՝ որոց առաքեցինն զմեզ. զի՞ ասես վասն քո։
23 * Ասէ, Ես՝ ձայն բարբառոյ յանապատի. ուղիղ արարէք զճանապարհ Տն. որպէս ասաց եսայի մարգարէ։
24 * Եւ որք առաքեցանն, ՚ի փարիսեցւոց անտի էին։
25 * Հարցին ցնա՝ և ասեն. իսկ զի՞ մկրտես՝ եթէ դու չես Քն, և ոչ եղիա. և ոչ մարգարէն։
26 * Պատասխանի ետ նոցա յօհաննէս՝ և ասէ. Ես մկրտեմ զձեզ ջրով. ՚ի միջի ձերում կայ՝ զոր դուքն ոչ գիտէք։
27 * Նա է զկնի իմ գալոցն է. որ առաջի իմ եղև. որում չեմ արժանի, եթէ լուծից զխրացս կօշկաց նորա։
28 * Այս ՚ի բեթաբրայ եղև յայնկոյս յորդանանու. ուր էրն յօհաննէս, և մկրտէր։ (և անդ լինէր)
29 * Ի վաղիւն անդր տեսանէ զՅս զի գայր առ նա. և ասէ, ահաւասիկ գառն Այ՝ որ բառնայ զմեղս աշխարհի։
30 * Սա է, վն որոյ եսն ասէի. զկնի իմ գայ այր. որ առաջի իմ եղև. զի յառաջ իսկ էր քան զիս։
31 * Եւ ես ոչ գիտէի զնա. այլ զի յայտնի լինիցի իէլի, վասն այնորիկ եկի ես ջրով մկրտել։
32 * Եւ վկայեաց յօհաննէս և ասէ. թէ տեսանէի զհոգին՝ զի իջանէր իբրև զաղաւնի յերկնից. և հանգչէր ՚ի վն նր։
33 * Եւ ես ոչ գիտէի զնա. այլ որ առաքեացն զիս մկրտել ջրով՝ նա ասաց ցիս. յոր վերայ տեսանիցես զհոգին, զի իջանիցէ, և հանգչիցի ՚ի վերայ նր, նա է՝ որ մկրտէ հոգւովն սրբով։
34 * Եւ ես տեսի, և վկայեցի, եթէ սա է Որդին Այ։
35 * Ի վաղիւն անդր կայր յօհաննէս, և յաշակերտաց անտի նր երկու։
36 * Եւ նայեցեալ ընդ Յս զի զգնայր, և ասէ. ահաւասիկ Քն գառն Այ։
37 * Լուան ՚ի նմանէ երկու աշակերտքն զի խօսէր. և գնացին զհետ Յի։
38 * Իբրև դարձաւ Յս՝ և ետես զնս զի երթային զհետ նր, ասէ ցնս. զի՞նչ խնդրէք. նոքա ասեն ցնա. Ռաբբի, (որ թարգմանեալ կոչի վարդապետ։) ո՞ւր են օթեվանք քո։
39 * Ասէ ցնս՝ եկայք, և տեսէք։ եկին, և տեսին, ուր էին օթեվանք նր. և առ նմա ագան այն օր. զի ժամ էր իբրև տասներորդ։
40 * Էր անդրէաս եղբայր սիմօնի վիմի, մի յերկուց անտի. որք լուանն ՚ի Յօհաննէ՝ և գնացին զկնի նր։
41 * Գտանէ սա նախ զեղբայր իւր զսիմօն, և ասէ ցնա. գտաք զմեսիայ՝ (որ թարգմանի Քս։)
42 * Եւ եած զնա առ Յս։ հայեցեալ ընդ նա Յս ասէ. դու ես սիմօն որդի յօնանու. դու կոչեսցիս կեփաս. որ թարգմանի պետրոս.
43 * Ի վաղիւն անդր կամեցաւ ելանել ՚ի գալիլեա. գտանէ զփիլիպպոս, և ասէ ցնա Յս. եկ զկնի իմ։
44 * Եւ էր փիլիպպոս ՚ի բեթսայիդայ, ՚ի քաղաքէ անդրեայ և պետրոսի։
45 * Գտանէ փիլիպպոս զնաթանայէլ, և ասէ ցնա. զորմէ գրեաց Մովսէս յօրէնսն՝ և մարգարէքն, գտաք զՅս զորդի յովսեփայ ՚ի նազարեթէ։
46 * Ասէ ցնա նաթանայէլ. իսկ ՚ի նազարեթէ մարթ ինչ իցէ բարւոյ իմիք լինել։ ասէ ցնա փիլիպպոս, եկ և տես։
47 * Իբրև ետես Յս զնաթանայէլ զի գայր առ նա, ասէ վն նր. ահա արդարև իսրայէլացի յորում նենգութիւն ոչ գոյ։
48 * Ասէ ցնա նաթանայէլ. ուստի՞ ճանաչես զիս։ պատասխանի ետ Յս և ասէ ցնա. մինչչև էր փիլիպպոսի կոչեալ զքեզ՝ զի էիր ՚ի ներքոյ թզենւոյն, տեսի զքեզ։
49 * Պատասխանի ետ նմա նաթանայէլ և ասէ. Ռաբբի, դու ես որդի Այ. դու ես թագաւոր իէլի։
50 * Պատասխանի ետ նմա Յս և ասէ. փոխանակ զի ասացի քեզ, թէ տեսի ՚ի ներքոյ թզենւոյն, հաւատաս՝ մեծամեծս ևս քան զայս տեսցես։
51 * Եւ ասէ ցնա. ամէն ամէն ասեմ ձեզ՝ տեսանիցէք զերկինս բացեալ՝ և զհրեշտակս Այ՝ զի ելանիցեն՝ և իջանիցեն ՚ի վերայ Որդւոյ մարդոյ։

## Գլ. Բ.

1 Եւ յաւուրն երրորդի հարսանիք էին ՚ի կանայ գալիլեացւոց. և անդ էր մայրն Յի։
2 * Կոչեցաւ և Յս և աշակերտքն նորա ՚ի հարսանիսն։
3 * Եւ ՚ի պակասել գինւոյն, ասէ մայրն ցՅս. գինի ոչ ունին։
4 * Եւ ասէ ցնա Յս. զի՞ կայ իմ և քո՝ կին դու. չև է հասեալ ժամանակ իմ։
5 * Ասէ մայր նորա ցսպասաւորսն. որ զինչ ասիցէ, արասջիք։
6 * Էին անդ թակոյկք կճեայք վեց՝ ըստ սրբութեան հրէից. տանէին միմի ՚ի նցնէ մարս երկուս կամ երիս։

* Ասէ

7 *Ասէ ցնոսա Յս. լցէք զթակոյկսդ ջրով ։ և լցին զնոսա մինչև ՚ի վեր ։
8 *Եւ ասէ ցնոսա. արդ՝ առէք, և բերէք տանտիրապետին ։ և նոքա բերին ։
9 *Եւ իբրև ճաշակեաց տանտիրապետն զջուրն գինի եղեալ. և ոչ գիտէր ուստի իցէ. բայց սպասաւորքն գիտէին՝ որք արկին զջուրն ։ խօսի ընդ փեսային տանտիրապետն ։
10 *Եւ ասէ, ամ մարդ զանոյշ գինին յառաջագոյն պաշտէ. և յորժամ արբենան, յայնժամ զյոռին. դու պահեցեր զանոյշ գինիդ մինչև ցայժմ ։
11 *Զայս արար սկիզբն նշանաց Յս ՚ի կանայ Գալիլեացւոց. և յայտնեաց զփառս իւր. և հաւատացին ՚ի նա աշակերտքն նորա ։

Բ Ի.

12 *Յետ այսորիկ էջ Յս ՚ի Կափառնաում, ինքն և մայր իւր, և եղբարք իւր. և անդ լինէր ոչ բազում ինչ աւուրս ։
13 *Եւ էր մերձ զատիկն հրէից. և ել Յս յԵմ ։
14 *Եւ եգիտ ՚ի տաճարին՝ զի վաճառէին զարջառս՝ և զոչխարս՝ և զաղաւնիս. և զլումայափոխսն, որք նստէին ։



15 *Եւ արար խարազան չուանեայ. և եհան զամենեսին ՚ի տաճարէն, զոչխարսն՝ և զարջառս, և զպղինձս հատավաճառացն ցրուեաց ։ և զսեղանսն կործանեաց ։
16 *Եւ որք զաղաւնիսն վաճառէին՝ ասէ ցնս. առէք զայդ աստի, և մի՛ առնէք զտուն Հօր իմոյ՝ տուն վաճառի ։
17 *Յայնժամ յիշեցին աշակերտքն նը՝ թէ գրեալ է, ‖Նախանձ տան քոյ կերիցէ զիս ։ (Սաղմ. 68.10.)
18 *Պատասխանի ետուն հրէայքն և ասեն ցնա. զի՞նչ նշան ցուցանես դու մեզ՝ զի զայդ առնես ։
19 *Պատասխանի ետ Յս՝ և ասէ ցնս. ‖Քակեցէք զտաճարդ զայդ՝ և զերիս աւուրս շինեցից զդա ։ (Մատթ. 26. 61. և 27.40 Մարկ. 14. 58. և 15.29)
20 *Ասեն ցնա հրէայքն. զքառասուն և զվեց ամ շինեցաւ տաճարս այս. և դու զերիս աւուրս կանգնեսցես զդա ։
21 *Բայց նա ասէր վասն տաճարի մարմնոյ իւրոյ ։
22 *Իսկ յորժամ յարեաւն ՚ի մեռելոց, յիշեցին աշակերտքն նը՝ թէ այս է զոր ասացն. ‖և հաւատացին գրոյն, և բանին, զոր ասաց Յս ։ (Սաղմ. 3. 6. և 56. 9.)
23 *Եւ իբրև էր յԵմ ՚ի զատկին տօնի, բազումք հաւատացին յանուն նը. զի տեսանէին զնշանսն՝ զորս առնէր ։

Գ Կ

24 *Բայց ինքն Յս ոչ հաւատայր յանձն նոցա. քանզի ինքն գիտէր զամենայն ։ (զանձն իւր նոցա)
25 *Եւ զի ոչ էր պիտոյ՝ եթէ ոք վկայեսցէ վասն մարդոյ. զի ինքն իսկ գիտէր՝ զինչ կրէր ՚ի մարդն ։

## Գ Լ ։ Գ ։

1 Եւ էր այր մի ՚ի փարիսեցւոց անուն Նիկոդեմոս անուն նը՝ իշխան հրէից ։
2 *Սա եկն առ նա գիշերի՝ և ասէ ցնա. Ռաբբի, գիտեմք եթէ յԱյ եկեալ ես վարդապետ. զի ոչ ոք կարէ զայդ նշանս առնել՝ զոր դուդ առնես, եթէ ոչ Այ իցէ ընդ նմա ։
3 *Պատասխանի ետ Յս և ասէ ցնա. ամէն ամէն ասեմ քեզ. եթէ ոչ ոք ծնցի վերստին, ոչ կարէ տեսանել զարքայութիւն Այ ։ (Եթէ ոչ ոք)
4 *Ասէ ցնա Նիկոդեմոս. զիա՞րդ կարէ մարդ ծնանել՝ որ ծերն իցէ ։ միթէ մա՞րթ իցէ անդրէն յորովայն մօր իւրոյ կրկին մտանել և ծնանել ։
5 *Պատասխանի ետ Յս և ասէ ցնա. ամէն ամէն ասեմ քեզ. եթէ ոչ ոք ծնցի ՚ի ջրոյ և ՚ի Հոգւոյ՝ ոչ կարէ մտանել յարքայութիւն Այ ։ (Եթէ ոչ ոք)
6 *Զի ծնեալն ՚ի մարմնոյ՝ մարմին է. և ծնեալն ՚ի Հոգւոյ՝ հոգի է ։
7 *Դու մի՛ զարմանար, թէ ասացի քեզ՝ պարտ է ձեզ ծնանել վերստին ։
8 *Զի հողմ ուր կամի՝ շնչէ. և զձայն նը լսես. ‖այլ ո՛չ գիտես, ուստի՛ գայ՝ կամ յո՛ երթայ. սոյնպէս և ամ ծնեալն ՚ի Հոգւոյն ։ (Սաղմ. 134.7.)
9 *Պատասխանի ետ Նիկոդեմոս, և ասէ ցնա. զիա՛րդ մարթի այդմ լինել ։
10 *Պատասխանի ետ Յս և ասէ ցնա. դու ես վարդապետն Իղի՝ և զայդ ո՞չ գիտես ։
11 *Ամէն ամէն ասեմ քեզ. զի զոր ինչ գիտեմք, խօսիմք. և զոր տեսաք, վկայեմք. և զվկայութիւն մեր ո՛չ ընդունիք ։
12 *Իսկ արդ եթէ

զերկրաւորս ասացի ձեզ՝ և ոչ հաւատայք. զիա՞րդ եթէ զերկնաւորն ասացից՝ հաւատայցէք։

Գ.Ի.

13 * Եւ ոչ ոք ել յերկինս, եթէ ոչ որ էջն յերկնից՝ Որդի մարդոյ, որ էն յերկինս։ 14 * Եւ որպէս Մովսէս բարձրացոյց զօձն յանապատի, նոյնպէս բարձրանալ պարտ է Որդւոյ մարդոյ։ 15 * Զի ամ, որ հաւատայ ՚ի նա՝ ոչ կորիցէ, այլ ընկալցի զկեանսն յաւիտենականս։ 16 * Զի այնպէս սիրեաց ած զաշխարհ՝ մինչև զՈրդին իւր միածին ետ. զի ամ որ հաւատայ ՚ի նա, մի կորիցէ՝ այլ ընկալցի զկեանս յաւիտենականս։ 17 * Զի ոչ առաքեաց Ած զՈրդի իւր յաշխարհ՝ թէ դատեսցէ զաշխարհ, այլ զի փրկեսցի աշխարհ նովաւ։ 18 * Որ հաւատայ ՚ի նա, ոչ դատապարտեսցի. և որ ոչ հաւատայ ՚ի նա՝ արդէն իսկ դատապարտեալ է. զի ոչ հաւատաց յանուն միածնի Որդւոյն Այ։ 19 * Եւ այս իսկ է դատաստան. զի լոյս եկն յաշխարհ՝ և սիրեցին մարդիկ զխաւար առաւել քան զլոյս. զի էին գործք իւրեանց չարութեան։

20 * Զի ամենայն որ զչար գործէ՝ ատեայ զլոյս. և ոչ գայ առ լոյսն, զի մի յանդիմանեսցին գործք նորա։ 21 * Իսկ որ առնէ զճշմարտութիւն, գայ առ լոյսն, զի յայտնի լիցին գործք նր թէ Այ է գործեցան։

Գ.Գ.

22 * Յետ այսորիկ եկն Յս և աշակերտքն նորա յերկիրն Հրէաստանի. և անդ շրջէր նոքօք հանդերձ և մկրտէր։ 23 * Մկրտէր և Յովհաննէս ՚ի յայենովն մերձ առ Սաղիմ. զի ջուրք բազումք էին անդ. և գային, և մկրտէին։

24 * Զի չև ևս էր արկեալ յովհաննէս ՚ի բանտ։ 25 * Եւ եղև խնդիր յաշակերտացն յովհաննու ընդ հրէից վասն սրբութեան։ 26 * Եկին առ Յովհաննէս՝ և ասեն ցնա. Ռաբբի, որ էրն ընդ քեզ յայնկոյս յորդանանու. որում դու վկայեցեր. ահաւասիկ նա մկրտէ՝ և ամենեքին գան առ նա։ 27 * Պատասխանի ետ Յովհաննէս և ասէ. ոչ կարէ մարդ առնուլ յանձնէ և ոչինչ. եթէ ոչ իցէ տուեալ նմա յերկնից ՚ի վերուստ։ 28 * Դուք ձեզէն վկայէք ինձ, զի ասացի ձեզ՝ թէ չեմ ես Քսն, այլ թէ առաքեալ եմ առաջի նորա։ 29 * Որ ունի զհարսն՝ նա է փեսայ. իսկ բարեկամ փեսային, որ կայ և լսէ նմա. ուրախութեամբ ուրախ լինի վասն ձայնի փեսային. արդ՝ այս ուրախութիւն որ իմն է, լցեալ է։ 30 * Նմա պարտ է աճել՝ և ինձ մեղմանալ։ 31 * Որ ՚ի վերուստն գայ՝ ՚ի վերոյ է քան զամենայն. որ յերկրէ աստի է, յերկրէ է՝ և յերկրէ խօսի. որ յերկնիցն գայ †.

32 * Զորինչ ետես՝ և զոր լուաւ՝ վկայէ. և զվկայութիւն նր ոչ ոք ընդունի։

33 * Որ ընդունի զվկայութիւն նր՝ կնքեաց թէ Ած ճշմարիտ է։ 34 * Զի զոր ած առաքեաց՝ զբանս Այ խօսի. զի ոչ եթէ չափով տայ Ած զհոգին։

35 * Հայր սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ետ ՚ի ձեռս նորա։ 36 * Որ հաւատայ յՈրդի՝ ընդունի զկեանս յաւիտենականս. և որ ոչն հնազանդի Որդւոյ՝ ոչ տեսցէ զկեանս. այլ բարկութիւն Այ մնայ ՚ի վերայ նորա։

† ՚ի վերոյ է ամենայն

## ԳԼ. Դ.

1 Իբրև գիտաց Յս՝ եթէ լուան փարիսեցիքն՝ եթէ Յս բազում աշակերտս առնէ և մկրտէ քան զյովհաննէս։ 2 * (Քանզի ոչ եթէ Յս ինքնին մկրտէր՝ այլ աշակերտքն նորա։)

3 * Եթող զհրէաստան երկիր. և եկն միւսանգամ ՚ի գալիլեա։ 4 * Եւ էր նմա անցանել ընդ սամարիայ։

5 * Գայ նա ՚ի քաղաք մի սամարացւոց՝ որում անուն էր սուքար. մերձ ՚ի գիւղն զոր ետ յակոբ որդւոյ իւր յովսեփայ։

6 * Եւ անդ էր աղբիւր մի յակոբայ. և Յս վաստակեալ ՚ի ճանապարհէն, նստէր ՚ի վերայ աղբերն. և էր ժամ իբրև վեցերորդ։



*Գայ

*Գայ կին մի 'ի սամարիայ հանել ջուր․ 7 ասէ ցնա Յս՟․ տո՛ւր ինձ ըմպել։
*(Զի աշակերտքն նորա երթեալ էին 8 'ի քաղաք անդր՝ զի կերակուրս գնես-ցեն։ ) *Ասէ ցնա կինն սամարացի․ 9 դու՝ որ հրէայդ ես, զիա՞րդ յինէն ըմպել խնդրես 'ի կնոջէ սամարացւոյ․ զի ո՛չ երբէք խառնակին հրէայք ընդ սամարացիս։ *Պատասխանի ետ նմա 10 Յս՟ և ասէ․ եթէ գիտէիր դու զպարգևն Այ՟․ և ո՛վ է՝ որ ասէդ ցքեզ՝ թէ տուր ինձ ըմպել․ դու արդեօք խնդրէիր 'ի նմանէ՝ և տայր քեզ զջուրն կենդանի։ *Ասէ ցնա կինն․ Տ՟ր, դու 11 քանզի և դոյլ իսկ ո՛չ ունիս, և ջրհորս խորէ․ իսկարդ ուստի՞ ունիցիս ըզ ջուրն կենդանի։ *Միթէ դու մեծ 12 ինչ ո՞ք իցես․ քան զհայրն մեր յակոբ՝ որ զայս ջրհոր ետ մեզ․ և ինքն աստի էարբ՝ և որդիք նորա, և խաշինք նր՟։
*Պատասխանի ետ նմա Յս՟ և ասէ․ 13 ամենայն, որ ըմպէ 'ի ջրոյ յայդմանէ՝ միւսանգամ՝ ծարաւի․ բայց որ ըմպէ 'ի ջրոյն, զոր ես տաց նմա՝ մի՛ ծարաւեսցի յաւիտեան։ *Այլ ջուրն, զոր 14 ես տաց նմա, եղիցի 'ի նմա աղբիւր ջրոյ բղխեցելոյ 'ի կեանսն յաւիտենա կանս։ *Ասէ ցնա կինն․ Տ՟ր, տո՛ւր ինձ 15 զջուրն զայն, զի մի՛ ծարաւեսցայց․ և մի՛ եկից այսր հանել զջուր։ *Ասէ 16 ցնա Յս՟․ երթ կոչեա՛ զայր քո՝ և եկ այսր։ *Պատասխանի ետ նմա կինն 17 և ասէ․ չի՛ք իմ այր։ ասէ ցնա Յս՟․ բար ւոք ասացեր՝ թէ չի՛ք իմ այր։
*Զի հինգ այր փոխեալ է քո․ և զոր 18 այժմ ունիս՝ չէ՛ քո այր․ զայդ արդար ասացեր։ *Ասէ ցնա կինն․ Տ՟ր, թուի 19 ինձ թէ մարգարէ իցես դու։
*Հարքն մեր 'ի լերինս յայսմիկ երկիր 20 պագին․ և դուք ասէք ‖ եթէ յէ՟մ և եթէ տեղի, ուր արժան իցէ երկիր պագանել։ *Ասէ ցնա Յս՟․ կին դու՝ 21 հաւատա՛ ինձ․ զի եկեսցէ ժամանակ յորժամ ո՛չ 'ի լերինս յայսմիկ․ և ո՛չ յէ՟մ երկիրպագանիցեն Հօր։

[Բ․ Օրէ 12․5․]

*‖ Դուք երկիրպագանէք, որում ո՛չն 22 գիտէք․ մեք երկիրպագանեմք, որում գիտեմքն․ զի փրկութի՟ 'ի հրէից է։

[Դ Թագ 17․41․]

*Այլ եկեսցէ ժամանակ՝ և այժմ 23 իսկ է․ յորժամ ճշմարիտքն երկրպա-գուք երկիրպագանիցեն Հօր հոգւով և ճշմարտութ՟բ․ քանզի և Հայր զայն պիսի երկրպագուս իւր խնդրէ։
*‖ Հոգի է Ած՟ և երկրպագուաց նր՟ 24 հոգւով և ճշմարտութ՟բ պարտ է եր-կիր պագանել։ *Ասէ ցնա կինն, գի- 25 տեմք՝ զի մեսիայ գայ՝ (անուանեալն Քս՟։ ) յորժամ եկեսցէ նա, պատմես-

[Գ․Կ․]

[Բ․Կորն․ 3․17․]

26 ցէ մեզ զամենայն։ *Ասէ ցնա Յս՟․ ես եմ՝, որ խօսիմս ընդ քեզ։
27 *Եւ յայն բան եկին աշակերտքն նր՟․ և զարմանային, զի ընդ կնոջն խօսէր․ բայց ոչ ոք ասաց 'ի նոցանէ, թէ զի՞նչ խնդրես, կամ զի՞նչ խօսիս ընդ դմա։
28 *Եթող կինն զսափոր իւր, և չոգաւ 'ի քաղաքն․ և ասէ ցմարդիկն։
29 *Եկա՛յք, և տեսէ՛ք զայր մի, որ ասաց ինձ զամենայն, որ ինչ իմ գործեալ է։
30 միթէ նա՞ իցէ Քս՟ն։ *Ելին 'ի քաղա 31 քէն՝ և գային առ նա։ *Եւ մինչև եկեալ էին նոքա, աղաչէին զնա աշա կերտքն և ասէին․ Ռաբբի, հա՛ց կեր։
32 *Նա ասէ ցնոսա․ ես կերակուր ու-նիմ՝ ուտել, զոր դուքն ո՛չ գիտէք։
33 *Ասէին աշակերտքն ընդ միմեանս․ միթէ եբե՞ր ինչ ոք դմա ուտել։
34 *Ասէ ցնոսա Յս՟․ իմ կերակուր այն է՝ զի արարից զկամս այնորիկ՝ որ ա-ռաքեացն զիս․ և կատարեցից զգործն 35 նորա։ *Ո՞չ դուք ասէք՝ եթէ այլ ևս չորք ամիսք են, և հունձք գան․ ահաւ ասիկ ես ասեմ ձեզ՝ ամբարձէ՛ք զաչս ձեր, և տեսէ՛ք զարտորայսն, ‖ զի սպի տակացեալք են՝ և 'ի հունձս հասեալք։
36 *Եւ որ հնձէն, վարձս առնու․ և ժո ղովէ զպտուղ 'ի կեանսն յաւիտենա-կանս․ զի որ սերմանէն՝ և որ հնձէ՝ 37 հասարակ ցնծասցեն։ *Յայսմ իսկ է բանն ճշմարիտ․ զի այլ է՝ որ սեր-38 մանէ․ և այլ է՝ որ հնձէ։ *Ես առա քեցի զձեզ հնձել՝ զոր ո՛չ դուք վաս-տակեցէք․ այլք վաստակեցին, և դուք 39 'ի վաստակս նց՟ մտէք։ *Եւ 'ի քաղա-քէն յայնմանէ սամարացւոց բազումք հաւատացին 'ի նա, վասն բանի կնոջն վկայելոյ՝ եթէ ասաց ինձ զամենայն, 40 որ ինչ իմ գործեալ էր։ *Իսկ իբրև եկին առ նա սամարացիքն, աղաչէին զնա լինել առ նոսա․ և եղև անդ աւ-41 ուրս երկուս։ *Եւ ևս բազումք հաւ ատացին 'ի նա վասն բանին նորա։

[‖ Մատ․ 9․ 37․]

[Ղուկ․ 10․ 2․]

42 *Եւ ասէին ցկինն․ թէ ո՛չ այսուհե տև վասն քո խօսիցդ հաւատամք․ զի մեզէն իսկ լուաք 'ի դմանէ․ և գի-տեմք եթէ դա է ճշմարտի՟ փրկիչ աշխարհաց։
43 *Եւ յետ երկուց աւուրց ել անտի և 44 գնաց 'ի գալիլեա։ *‖ Զի ինքն իսկ Յս՟ վկայեաց՝ եթէ մարգարէ յիւր ում գաւառի պատիւ ո՛չ ունի։
45 *‖ Այլ յորժամ եկն նա 'ի գալիլեա․ ընկալան զնա գալիլեացիքն․ զի տե-սեալ ևս էր զա՟մ նշանսն, զորս արար յէ՟մ 'ի տօնին․ քանզի և նոքա եկեալ 46 էին 'ի տօնն։ *Եկն դարձեալ 'ի կա-նայ գալիլեացւոց՝ ‖ ուր արար զջուրն գինի։

[Գ․Օ․]

[‖ Մատ․ 13․ 57․]

[Մարկ․ 6․ 4․]

[Ղուկ․ 4․ 24․]

[‖ Մատ․ 4․ 12․]

գինի. և անդ էր թագաւորազն մի, որոյ որդին հիւանդ կայր ՚ի Կափառնաում: *Նա իբրև լուաւ եթէ Յս եկեալ է ՚ի Հրէաստանէ ՚ի Գալիլեա, եկն առ նա, և աղաչէր. զի իջցէ, և բժշկեսցէ զորդի նորա. քանզի մերձ էր ՚ի մեռանել: *Ասէ ցնա Յս. եթէ ոչ նշանս ինչ և արուեստս տեսանէք՝ ոչ հաւատայք: *Ասէ ցնա թագաւորն. Տր, էջ մինչև մեռեալ իցէ մանուկն իմ: *Ասէ ցնա Յս. երթ, որդին քո կենդանի է: և հաւատաց այրն բանին՝ զոր ասաց ցնա Յս, և գնաց: *Եւ մինչդեռ իջանէր՝ ընդ առաջ եղեն նմա ծառայքն նր. աւետիս ետուն և ասեն, թէ մանուկն նր կենդանի է: *Հարցանէր ցնոսա վն ժամուն՝ յորում ապաքինեաց. և ասեն ցնա. երէկ յեօթներորդ ժամուն եթող զնա ջերմն: *Գիտաց հայրն նր՝ եթէ յայնմ ժամու՝ յորում ասացն ցնա Յս՝ թէ որդին քո կենդանի է. և հաւատաց ինքն և ամ տունն իւր: *Զայս դարձեալ երկրորդ նշան արար Յս եկեալ ՚ի Հրէաստանէ ՚ի Գալիլեա:

(47–54)

Մատթ. 1. 14. Ղուկ. 4. 14. Մարկ. 2. 9. — ապաքինե-նեցաւ — ժամու էր՝

## ԳԼ: Ե:

ԳԼ Ա

Յետ այսորիկ տօն էր Հրէից: և ել Յս յԵրուսաղէմ: *Եւ էր յԵրուսաղէմ ՚ի պրոբատիկէ աւազանին. որ կոչիւր եբրայեցերէն բեթհեզդա, հինգ սրահս: *Յորս անկեալ դնիւր բազմութիւն յոյժ հիւանդաց, կուրաց, կաղաց, գօսացելոց. որք ակնկալեալ էին ջրոյն յուզելոյ: *Եւ հրեշտակ Տն իջանէր ըստ ժամանակի յաւազանն՝ և յուզէր զջուրսն. և որ նախ ՚ի շարժումն ջուրցն իջանէր յաւազանն՝ բժշկիւր. ոչ ունելով զնշան հիւանդութեան: *Եւ անդ էր այր մի, որոյ երեսուն և ութ ամ էր ՚ի հիւանդութեան իւրում: *Զնա իբրև ետես Յս, զի անկեալ դնիւր. և գիտաց եթէ բազում ժամանակք են այնուհետև, ասէ ցնա. կամի՞ս ողջ լինել: *Պատասխանի ետ նմա հիւանդն. Տր, ոչ զոք ունիմ, թէ յորժամ ջուրքն յուզիցին, արկցէ զիս յաւազանն. և մինչ ես դանդաղիմ, այլոք քան զիս յառաջագոյն իջանէ: *Ասէ ցնա Յս. արի՛, առ զմահիճս քո՝ և գնա՛: *Եւ ողջացաւ այրն. և յարեաւ՝ եառ զմահիճս իւր՝ և շրջէր. և էր շաբաթ յաւուրն յայնմիկ: *Ասեն Հրէայքն ցբժշկեալն. Շաբաթ է՝ և ոչ է արժան քեզ առնուլ զմահիճս քո: *Պատասխանի ետ նց և ասէ. որ բժշկեացն զիս, նա ասաց ցիս, առ զմահիճս քո՝ և գնա՛: *Հարցին ցնա, և ասեն. ո՞վ է այրն, որ ասաց ցքեզ՝ առ զմահիճս քո՝ և շրջեա՛ց: *Եւ բժշկեալն ոչ գիտէր թէ ով իցէ. քանզի Յս խոյս ետ վասն ամբոխին ՚ի տեղւոջ անդի: *Յետ այսորիկ գտանէ զնա Յս ՚ի տաճարին, և ասէ ցնա. ահաւասիկ ողջացար, մի ևս մեղանչեր. զի մի չար ևս ինչ լինիցի քեզ: *Գնաց այրն՝ և պատմեաց Հրէիցն, եթէ Յս էր՝ որ բժշկեացն զիս: *Եւ վասն այնորիկ հալածէին զՅս Հրէայքն, զի զայն առնէր ՚ի շաբաթու: *Եւ Յս պատասխանի ետ նց՝ Հայր իմ մինչև ցայժմ գործէ. և ես գործեմ: *Վասն այնորիկ առաւել խնդրէին Հրէայքն սպանանել զնա. զի ոչ միայն լուծանէր զշաբաթս՝ այլ և Հայր իւր կոչէր զԱծ, և հաւասար առնէր զանձն Այ:

(1–18)

Մարկ. 23. 5. Բ Օրէ. 16. 1. Նէեմ. 20. 11. Նէեմ. 17. 24.

ԳԼ Կ

*Պատասխանի ետ Յս և ասէ ցնոսա: ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ կարէ Որդի մարդոյ առնել յանձնէ, և ոչինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի առնէ. զի զոր նայն առնէ, զնոյն և Որդին նմին նման գործէ: *Զի Հայր սիրէ զՈրդի, և զամենայն ինչ ցուցանէ նմա՝ զոր ինքն առնէ: և մեծամեծս ևս քան զսոյնս ցուցանէ նմա զգործս, ընդ որս դուք զարմանայք: *Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ՝ նոյնպէս և Որդի զորս կամի կենդանի առնէ: *Եւ ոչ եթէ Հայր դատէ զոք՝ այլ զամ դատաստան ետ Որդւոյ իւրոյ: *Զի ամենեքեան պատուեսցեն զՈրդին՝ որպէս պատուեն զՀայրն. որ ոչ պատուէ զՈրդին, ոչ պատուէ զՀայր զառաքիչն նորա: *Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ զբանն իմ լսէ և հաւատայ այնմ, որ առաքեացն զիս՝ ընդունի զկեանսն յաւիտենականս. և ՚ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ՚ի մահուանէ ՚ի կեանս: *Ամէն ամէն ասեմ ձեզ. զի գայ ժամանակ՝ և արդէն իսկ է. յորժամ մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Այ. և որք լուիցենն, կեցցեն: *Զի որպէս Հայր ունի կեանս յանձին իւրում. նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յանձին իւրում: *Եւ իշխանութիւն ետ նմա դատաստան առնել. և զի Որդի մարդոյ է: *Ընդ այն զի՞ զարմանայք՝ զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքին որք ՚ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի նորա: *Եւ եկեսցեն արտաքս. որոց բարիս գործեալ իցէ՝ ՚ի յարութիւն կենաց. և որոց զչար արարեալ՝ ՚ի յարութիւն դատաս-

(12–29)

Մատթ. 25. 46.

30 ...տատանաց: *Ո՛չ կարեմ ես յանձնէ առնել և ոչինչ. այլ որպէս լսեմ, դատեմ. և դատաստան իմ արդար է: զի ո՛չ խնդրեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս:

31 *Եթէ ես վկայեմ վասն անձին իմոյ. վկայութիւն իմ չէ ճշմարիտ:

32 *Այլ է՛ որ վկայէ վասն իմ. և դուք գիտէք, եթէ ճշմարիտ է վկայութիւն՝ զոր վկայեաց վասն իմ:

33 *Դուք առաքեցիք առ Յօհաննէս՝ և վկայեաց ճշմարտութեանն:

34 *Այլ ես ոչ եթէ ՚ի մարդկանէ առնում զվկայութիւն, այլ զայս ասեմ, զի դուք ապրեսջիք:

35 *Նա էր ճրագն, որ լուցեալ էր, և ծագիւր: և դուք կամեցայք ցնծալ առժամանակ մի ՚ի լոյս նր̄:

36 *Այլ ես ունիմ զվկայութիւն մեծ ևս քան զՅօհաննու: զի գործսն՝ զորս ետ ցիս Հայր, զի կատարեցից զնոսա. նոքին իսկ գործքն՝ զորս գործեմ, վկայեն վ̄ա իմ, եթէ Հայր առաքեաց զիս:

37 *Եւ որ առաքեաց զիս Հայր՝ նա վկայեաց վասն իմ: Դուք՝ ոչ զձայն նր̄ երբէք լուա՛յք. և ոչ զտեսիլ նորա տեսիք:

38 *Եւ ոչ զբանն նր̄ ունիք ՚ի ձեզ բնակեալ: զի զոր նա առաքեաց՝ դուք նմա ոչ հաւատայք:

39 *Քննեցէք զգիրս. զի դուք համարիք նոքօք ունել զկեանսն յաւիտենականս: և նոքին իսկ են, որք վկայեն վ̄ա իմ, որովք համարիք ունել կեանս:

40 *Եւ դուք ոչ կամիք գալ առ իս՝ զի զկեանսն ունիցիք:

41 *Ես փառս ՚ի մարդկանէ ոչ առնում:

42 *Այլ գիտեմ զձեզ՝ թէ զսէրն այ̄ ոչ ունիք յանձինս:

43 *Ես եկի յանուն Հօր իմոյ՝ և ոչ ընդունիք զիս: եթէ այլոք եկեսցէ յիւր անուն, զնա ընդունիցիք:

44 *Զիա՞րդ կարէք դուք հաւատալ. զի զփառս ՚ի միմեանց առնուք. և զփառս զառ ՚ի միոյն այ̄ ոչ խնդրէք:

45 *Մի՛ համարիք՝ եթէ ես չարախօս ինչ լինիցիմ զձէնջ առ Հօր. գոյ, որ չարախօս կայ զձէնջ Մովսէս, յոր դուքն յուսացեալ էք:

46 *Զի եթէ հաւատայիք դուք Մովսէսի, հաւատայիք արդեօք և ինձ: զի նա վ̄ա իմ իսկ գրեաց:

47 *Զի եթէ նր̄ գրոցն ոչ հաւատայք. զիա՞րդ իմոյս բանից հաւատայցէք:

## ԳԼ. Զ.

1 Յետ այսորիկ գնաց Յս̄ յայնկոյս ծովուն գալիլեացւոց տիբերեայ:

2 *Եւ զհետ երթայր նորա ժողովուրդ բազում. զի տեսանէին զնշանսն, զորս առնէր ՚ի վ̄ր հիւանդաց:

3 *Ել ՚ի լեառն Յս̄, և անդ նստէր աշակերտօքն հանդերձ:

4 *Եւ էր մերձ զատիկ տօնն հրէից:

5 *Եբարձ ՚ի վեր զաչս իւր Յս̄, և ետես՝ զի ժողովուրդ բազում գայր առ նա. ասէ ցփիլիպպոս: ուստի՞ գնեսցուք հացս՝ զի կերիցեն դոքա:

6 *Զայս ասէր փորձելով զնա. այլ ինքն գիտէր զինչ առնելոցն էր:

7 *Պատասխանի ետ նմա փիլիպպոս: երկերիւր դահեկանի հաց չէ՛ դոցա բաւական, թէպէտ և իւրաքանչիւրոք սակաւ ինչ առնուցու:

8 *Ասէ ցնա մի յաշակերտացն նորա՝ անդրէաս՝ եղբայր սիմօնի վիմի:

9 *Ա՛յ աստ պատանեակ մի, որ ունի հինգ նկանակ գարեղէն. և երկուս ձկունս. այլ այն զի՞նչ է առ այդչափ մարդիկ:

10 *Ասէ Յս̄. բազմեցուցէք զմարդիկդ: և էր խոտ յոյժ ՚ի տեղւոջն: և բազմեցան մարդիկն թուով իբրև հինգհազար:

11 *Եւ էառ զհացն Յս̄՝ և գոհացաւ՝ և բաշխեաց բազմականացն: նոյնպէս և ՚ի ձկանցն որչափ և կամեցան:

12 *Եւ իբրև յագեցան՝ ասէ ցաշակերտսն իւր: ժողովեցէք զնշխարեալ կոտորսդ, զի մի՛ ինչ կորիցէ:

13 *Ժողովեցին, և լցին երկոտասան սակառի զկոտորոցն ՚ի հինգ գարեղէն նկանակէ անտի, որ յաւելաւ ՚ի կերողացն:

14 *Իսկ մարդիկքն իբրև տեսին զնշանսն՝ զոր արար: ասէին, սա՛ է ճշմարիտ մարգարէն, որ գալոց է յաշխարհ:

15 *Յս̄ իբրև գիտաց եթէ գալոց են յափշտակել զնա, զի արասցեն զնա թագաւոր, գնաց դարձեալ ՚ի լեառն միայն:

16 *Եւ իբրև երեկոյ եղև, իջին աշակերտքն նորա ՚ի ծովեզրն:

17 *Եւ մտեալ ՚ի նաւ՝ գային յայնկոյս ծովուն ՚ի կափառնաում: և իբրև նսեմացաւ, և չևևս եկեալ էր առ նոսա Յս̄:

18 *Եւ ծովն ՚ի սաստիկ հողմոյ շնչելոյ յուզիւր:

19 *Եւ վարեալ իբրև ասպարէզս քսանևհինգ, կամ երեսուն՝ տեսանէին զՅս̄՝ զի գնայր ՚ի վ̄ր ծովուն, և մերձ էր ՚ի նաւն. և զարհուրեցան յոյժ:

20 *Նա ասէ ցնոսա: ես եմ, մի՛ երկնչիք:

21 *Եւ կամէին զնա ընդունել ՚ի նաւն, և վաղվաղակի եհաս նաւն յերկիրն՝ յոր երթային:

22 *Ի վաղիւ անդր ժողովուրդն որ կայր յայնկոյս ծովուն, տեսանէր թէ այլ նաւ ոչ գոյր անդ բայց ՚ի միոյն, յոր մտին աշակերտքն Յս̄ի. և զի չէր մտեալ Յս̄ ընդ աշակերտսն իւր ՚ի նաւն. բայց միայն աշակերտքն նորա գնացին:

23 *Իբրև այլ նաւք գային ՚ի տիբերեայ մօտ յայն տեղին՝ ուր զհացն կերին:

24 *Իսկ իբրև ետես ժողովուրդն՝ եթէ Յս̄ չէ անդ՝ և ոչ աշակերտքն նորա,

առին

առին նոքա զնաւսն, և եկին 'ի կափառնաում խնդրել զՅս։ 25 *Եւ իբրև գտին զնա յայնկոյս ծովուն, ասեն ցնա․ Ռաբբի, երբ եկիր այսր։ 26 *Պատասխանի ետ նց Յս և ասէ․ ամէն ամէն ասեմ ձեզ․ խնդրէք զիս, ոչ եթէ զնշանս ինչ տեսէք, այլ զի կերէք 'ի հացէ անտի, և յագեցայք։ 27 *Երթայք, գործեցէք մի զկորստական կերակուրն, այլ զկերակուրն, որ մնայ 'ի կեանսն յաւիտենականս, զոր Որդին մարդոյ տացէ ձեզ․ քանզի զնա Հայր կնքեաց Ած։ 28 *Ասեն ցնա․ զի՞նչ առնիցեմք՝ զի զգործսն Այ գործեսցուք։ 29 *Պատասխանի ետ ցնս Յս, և ասէ․ այս է գործն Այ․ զի հաւատասջիք յայն, զոր առաքեացն նա։ 30 *Ասեն ցնա․ զի՞նչ նշանս առնիցես՝ զի տեսցուք, և հաւատասցուք․ զինչ գործիցես։ 31 *Հարքն մեր կերին զմանանայն յանապատի անդ՝ որպէս և գրեալ է․ զհաց յերկնից ետ նց ուտել։ 32 *Ասէ ցնոսա Յս․ ամէն ամէն ասեմ ձեզ․ եթէ ոչ Մովսէս ետ ձեզ զհացն յերկնից․ այլ Հայրն իմ տայ ձեզ զհացն յերկնից զճշմարիտ։ 33 *Զի հաց Այ է, որ իջանէ յերկնից՝ և կեանս տայ աշխարհի։ 34 *Ասեն ցնա․ Տր, յամ ժամ տուր մեզ զհացն զայն։ 35 *Ասէ ցնոսա Յս․ ես եմ հացն կենաց․ որ գայ առ իս, ոչ քաղցիցի․ և որ հաւատայ յիս՝ ոչ երբեք ծարաւեսցի։ 36 *Այլ ասացի ձեզ, թէ տեսանէք զիս, և ոչ հաւատայք։ 37 *Զամ, զոր տայ ինձ Հայր, առ իս եկեսցէ, և որ գայ առ իս, ոչ հանից արտաքս։ 38 *Զի իջի ես յերկնից՝ ոչ զի զկամս իմ արարից․ այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։

Գ. Օ.

39 *Այս են կամք Հօր իմոյ, որ առաքեացն զիս․ զի զամ, զոր ետ ցիս Հայր՝ ոչ կորուսից 'ի նմանէ․ այլ յարուցից զնա յաւուրն յետնում։ 40 *Այս են կամք Հօր իմոյ․ զի ամ, որ տեսանէ զՈրդի՝ և հաւատայ 'ի նա, ընկալցի զկեանսն յաւիտենականս․ և ես յարուցից զնա յաւուրն յետնում։ 41 *Տրտնջէին զնմանէ Հրէայքն, զի ասաց թէ ես եմ հացն իջեալ յերկնից։ 42 *Եւ ասէին, ոչ սա է Յս որդին Յովսեփու՝ զորոյ մեք գիտեմք զհայրն։ Իսկարդ՝ զիա՞րդ ասէ՝ թէ ես յերկնից իջի։ 43 *Պատասխանի ետ Յս, և ասէ ցնոսա․ մի՛ քրթմնջէք ընդ միմեանս։ 44 *Ոչ ոք կարէ գալ առ իս, եթէ ոչ Հայրն՝ որ զիս առաքեաց՝ ձգեսցէ զնա․ և ես յարուցից զնա յաւուրն յետնում։ 45 *Գրեալ է 'ի մարգարէս՝ և եղիցին ամենեքեան ուսեալք յԱյ․ ամ որ լսէ 'ի Հօրէ՝ և ուսանի,

Մկ. 1. 34. Մտթ. 3. 17. և 17. 5. 1. Յովհ. 3. 23. Սղմ. 77. 24. Իմաստ. 16. 20. Սիրաք. 24. 29. Ներ. 16. 14. Թուոց. 11. 7. Մտթ. 13. 55. Մարկ. 6. 3. Եսայ. 54. 13.

46 գայ առ իս։ *Իբրև ոչ եթէ զՀայր ուրուք տեսեալ իցէ․ եթէ ոչ՝ որ էն յԱյ, նա ետես զՀայր։ 47 *Ամէն ամէն ասեմ ձեզ․ զի որ հաւատայ յիս՝ ընդունի զկեանսն յաւիտենականս։ 48 *Ես եմ հացն կենաց։ 49 *Հարքն ձեր կերին զմանանայն յանապատին՝ և մեռան։ 50 *Այս է հացն, որ յերկնից իջեալ է․ զի որ ուտիցէ ոք 'ի սմանէ՝ մի մեռանիցի։ 51 *Ես եմ հացն կենդանի, որ յերկնից իջեալ։ 52 *Եթէ ոք ուտիցէ 'ի հացէ յայսմանէ՝ կեցցէ յաւիտեան․ Եւ հացն, զոր ես տաց՝ մարմին իմ է․ զոր ես տաց վն կենաց աշխարհի։ 53 *Մարտնչէին ընդ միմեանս Հրէայքն՝ և ասէին․ զիա՞րդ կարէ սա տալ մեզ զմարմին իւր յուտել։ 54 *Ասէ ցնոսա Յս․ ամէն ամէն ասեմ ձեզ․ եթէ ոչ կերիջիք զմարմին Որդւոյ մարդոյ՝ և արբջիք զարիւն նր, ոչ ունիք կեանս յանձինս։ 55 *Որ ուտէ զմարմին իմ, և ըմպէ զարիւն իմ, ունի զկեանս յաւիտենականս․ և ես յարուցից զնա յաւուրն յետնում։ 56 *Զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է․ և արիւն իմ, ճշմարիտ ըմպելի է։ 57 *Որ ուտէ զմարմին իմ, և ըմպէ զարիւն իմ՝ յիս բնակեսցի, և ես 'ի նմա։ 58 *Որպէս առաքեաց զիս կենդանին Հայր, և ես կենդանի եմ վն Հօր․ և որ ուտէն զիս, և նա կեցցէ վն իմ։ 59 *Այս է հացն, որ յերկնից իջեալ․ ոչ որպէս կերին հարքն ձեր զմանանայն և մեռան․ որ ուտէ զհացս զայս՝ կեցցէ յաւիտեան։ 60 *Զայս ասաց 'ի ժողովրդեանն, յուսուցանելն 'ի կափառնաում։ 61 *Եւ բազումք յաշակերտացն իբրև լուան՝ ասէին․ խիստ է բանդ այդ․ ո՞վ կարէ լսել դմա։ 62 *Իբրև գիտաց Յս յանձն իւր՝ եթէ տրտնջեն վասն այնորիկ աշակերտքն իւր՝ ասէ ցնոսա․ այդ գայթագղեցուցանէ զձեզ։ 63 *Իսկարդ եթէ տեսանիցէք զՈրդի մարդոյ, զի ելանիցէ ուր էր զառաջինն։ 64 *Հոգին է կենդանարար, մարմին ինչ ոչ օգնէ․ զբանսն զոր ես խօսեցայ ընդ ձեզ՝ հոգի է և կեանք։ 65 *Այլ են ոմանք 'ի ձէնջ՝ որք ոչ հաւատան։ քանզի գիտէր Յս 'ի սկզբանէ, ո՞վ են այնոքիկ՝ որք ոչն հաւատան․ և ով այն է՝ որ մատնելոցն է զնա։ 66 *Եւ ասէր, վասն այնորիկ ասացի ձեզ՝ թէ ոչոք կարէ գալ առ իս, եթէ ոչ իցէ տուեալ նմա 'ի Հօրէ իմմէ։ 67 *Յայսմանէ բազումք յաշակերտացն նորա չոգան յետս․ և ոչ ևս շրջէին ընդ նմա։ 68 *Ասէ Յս ցերկոտասան աշակերտսն, միթէ և դուք կամիք երթալ։

*Պա-

Մտթ. 11. 27. Եւ յելս. 16. 13. 1. Կոր. 11. 27. Մէր. 3. 13.

69 *Պատասխանի ետ նմա սիմոն պետրոս. Տր, առ ո՞վ երթիցուք. բանս կենաց յաւիտենականաց ունիս։
70 *‖Եւ մեք հաւատացաք՝ և ծանեաք՝ եթէ դու ես Քն Որդի Այ։
71 *Պատասխանի ետ նոցա Յս. ո՞չ ես զձեզ զերկոտասանսդ ընտրեցի, և մին ՚ի ձէնջ սատանայ է։ 72 *Եւ ասէր զսի_մոնեան յուդայէ իսկարիովտացւոյ։ զի նա իսկ մատնելոց էր զնա. և մի էր յերկոտասանիցն։

‖Մատթ. 16. 16. Մարկ. 8. 29. Ղուկ. 9. 20.

## ԳԼ։ Է։

ԳԼ։

1 Յետ այսորիկ շրջէր Յս ՚ի գալի_լեա՛յ. քանզի ոչ կամէր ՚ի հրէաս_տանի շրջիլ. զի խնդրէին զնա հրէ_այքն սպանանել։ 2 *Եւ էր մերձ տօնն հրէից ‖ տաղաւարահարաց։ 3 *Ասեն ցնա եղբարքն նր. գնա՛ աստի, և երթ ՚ի հրէաստան. զի և աշակերտքն քո տեսցեն զգործսդ քո՝ զորս գործես։
4 *Զի ոչոք է՝ որ ՚ի ծածուկ ինչ գոր_ծէ՝ և խնդրէ զինքն համարձակ լինել։ եթէ զայդ գործես, յայտնեա՛ զանձն քո աշխարհի։ 5 *Քանզի և եղբարքն իսկ չէին հաւատացեալ ՚ի նա։
6 *Ասէ ցնոսա Յս. ժամանակ իմ չև է հասեալ. բայց ձեր ժամանակ յամ ժամու պատրաստ է։ 7 *Ոչ կարէ աշխարհս ատել զձեզ. բայց զիս ատեայ. զի ես վկայեմ վասն նր, եթէ գործքն իւր չարութեան են։ 8 *Դուք երթա՛յք ՚ի տօնն յայն. ես ոչ երթամ ՚ի տօնն յայն։ զի իմ ժամանակ չև է լցեալ։ 9 *Զայս իբրև ասաց՝ ինքն մնաց անդէն ՚ի գա_լիլեայ։ 10 *Իբրև ելին եղբարքն նր, ապա և ինքն ել ՚ի տօնն, ոչ յայտնի. այլ իբրև ՚ի ծածուկ։ 11 *Եւ հրէայքն խնդրէին զնա ՚ի տօնի անդ՝ և ասէին. ո՞ւր իցէ նա։ 12 *Եւ քրթմնջիւն էր ընդ նմանէ ՚ի ժողովուրդն. կէսքն ասէին՝ թէ բարւոք է. այլքն ասէին. ոչ, այլ մոլորեցուցանէ զժողովուրդն։
13 *Եւ ոչ ոք համարձակ խօսէր զնմանէ՝ վասն երկիւղին հրէից։

‖Ղևտ. 23. 34.

ԽԿ

14 *Իբրև տօնն ընդմիջեցաւ՝ ել Յս ՚ի տաճարն՝ և ուսուցանէր։
15 *Զարմանային հրէայքն և ասէին, զիա՞րդ զգիրս գիտէ սա, զի ուսեալ ընաւ չէ։ 16 *Պատասխանի ետ նո_ցա Յս և ասէ. իմ վարդապետու_թիւնս չէ իմ, այլ այնորիկ՝ որ առա_քեացն զիս։ 17 *Եթէ ոք կամի զկամս նր առնել՝ գիտասցէ վասն վարդապե_տութեանս, յԱյ իցէ արդեօք, եթէ ես ինչ յանձնէ իմմէ խօսիմ։ 18 *Որ յանձնէ իւրմէ խօսի՝ զփառս անձին իւրում խնդ_րէ։ իսկ որ խնդրէ զփառս այնորիկ, որ առաքեացն զնա՝ նա՛ ճշմարիտ է, և անիրաւութիւն ոչ գոյ ՚ի նմա։
19 *‖Ո՞չ մովսէս ետ ձեզ զօրէնս. և ոչ ո՛ք ՚ի ձէնջ առնէ զօրէնսն։ 20 *‖Զի՞ խնդ_րէք զիս սպանանել։ պատասխանի ետ ժողովուրդն և ասէ։ դև գոյ ՚ի քեզ. ո՞վ խնդրէ զքեզ սպանանել։
21 *Պատասխանի ետ նոցա Յս և ասէ։ գործ մի գործեցի. և ամենեքին զար_մացեալ էք։ 22 *‖Վա այնորիկ մովսէս ետ ձեզ զթլփատութի. (զի ոչ եթէ ՚ի մովսիսէ էր. ‖այլ ՚ի հարց անտի։) և ՚ի շաբաթու թլփատէք զմարդ։ 23 *Իսկ արդ եթէ զթլփատութի առնու մարդ ՚ի շաբաթու, զի մի՛ օրէնքն մովսիսի լուծ_ցին. ընդ իս ցասուցեալ էք՝ զի զողջոյն իսկ մարդ բժշկեցի ՚ի շաբաթու։
24 *‖Մի՛ ըստ աչս դատիք. այլ ուղիղ դատաստան արարէք։ 25 *Ասէին ոմանք յերուսաղեմացւոց անտի. ո՞չ նա է սա՝ զոր խնդրէին սպանանել։ 26 *Եւ աւասիկ յայտնապէս խօսի, և չասեն ինչ ընդ դմա. դուցէ արդեօք և իշխանքն գի_տացին թէ սա է Քն։ 27 *Այլ զսա գիտեմք ուստի է. իսկ Քն յորժամ գայցէ՝ ոչ ոք գիտէ ուստի է։
28 *Աղաղակեաց Յս ՚ի տաճարին. ու_սուցանէր, և ասէր։ և զիս գիտէք, և ուստի եմ գիտէք. և յանձնէ իմմէ ոչ եմ եկեալ. այլ է ճշմարիտ՝ որ առա_քեացն զիս՝ զոր դուքն ոչ գիտէք։
29 *Ես գիտեմ զնա. զի ՚ի նմանէ իսկ եմ. և նա առաքեաց զիս։ 30 *Խնդրէին զնա ունել՝ և ել ՚ի ձեռաց նց։ և ոչոք էարկ ՚ի նա ձեռն. զի չև էր հասեալ ժամ նր։ 31 *Եւ բազումք ՚ի ժողովրդե_նէն հաւատացին ՚ի նա. և ասէին. Քն յորժամ գայցէ՝ միթէ աւելի՞ ինչ նշանս առնիցէ՝ քան զոր սայս ա_նէ։ 32 *Եւ լուեան փարիսեցիքն զտըր_տունջ ժողովրդեանն զնմանէ. և առա_քեցին քահանայապետքն և փարիսե_ցիք սպասաւորս՝ զի կալցին զՅս։
33 *Ասէ Յս. փոքր մի ևս ժամանակ ընդ ձեզ եմ. և երթամ առ այն՝ որ առա_քեացն զիս։ 34 *‖Խնդրիցէք զիս՝ և ոչ գտանիցէք։ և ուր եմն երթամ, դուք ոչ կարէք գալ։ 35 *Ասեն հրէայքն ընդ միմեանս. իսկ յո՞ երթայցէ դա՝ զի մեք ոչ գտանիցեմք զդա։ միթէ ՚ի սփիւռս հեթանոսաց երթայցէ և ուսուցա_նիցէ զհեթանոսս։ 36 *Զի՞նչ է բանն այն՝ զոր ասաց. խնդրիցէք զիս՝ և ոչ գտանիցէք. և ուր եմն երթամ, դուք ոչ կարէք գալ։
37 *Յաւուրն ‖ աւուր մեծի տօնին կայր Յս՝ աղաղակէր և ասէր թէ ոք ծարաւի իցէ՝ եկեսցէ առ իս, և արբցէ։

‖Ելից. 24. 3. ‖Մրկ. 5. 18. ‖Ղևտ. 12. 3. ‖Ծննդ. 17. 11.

ԽԲ

‖2. Օրէ. 1. 16. ‖Մ. 13. 33.

ԽԳ

‖Ղևտ. 23. 36.

Ձիթ Օօօօօօ *Որ

*Որ հաւատայ յիս՝ որպէս ասաց գիրք՝ 38 գետք յորովայնէ նորա բղխեսցեն ջրոց կենդանութեան: *Զայս ասէր վասն Հոգւոյն՝ զոր ընդունելոց էին, որք հաւատային 'ի նա: զի չեւ էր Հոգին †. քանզի Յս չեւ էր փառաւորեալ: *Ոմանք 'ի ժողովրդենէն իբրեւ լսէին զբանս զայս, ասէին: սա է ճշմարիտ մարգարէն: *Այլք ասէին՝ սա է Քրիստոս: իսկ կէսքն ասէին՝ միթէ 'ի Գալիլեէ գալոց իցէ Քրիստոս: *Ո՞չ գիրք ասեն, եթէ 'ի զաւակէ Դաւթի, եւ 'ի Բեթղեհեմ գեղջէ՝ ուր Դաւիթն էր՝ գալոց է Քրիստոսն: *Եւ եղեւ հերձուած 'ի ժողովրդեանն վասն նորա: *Եւ ոմանք 'ի նոցանէ կամէին ունել զնա. այլ ոչ ոք մխեաց 'ի նա ձեռս: *Եւ եկին անդրէն սպասաւորքն առ քահանայապետսն եւ փարիսեցիս: եւ ասեն սոքա ցնոսա. ընդէ՞ր ոչ ածիք զնա այսր: *Պատասխանի ետուն սպասաւորքն, եւ ասեն. ոչ երբեք այնպէս խօսեցաւ մարդ՝ որպէս այրն այն: *Պատասխանի ետուն փարիսեցիքն, եւ ասեն: միթէ եւ դուք մոլորեցայք: *Միթէ յիշխանացն ոք հաւատա՞ց 'ի նա, կամ 'ի փարիսեցւոց: *Այլ այն խաժամուժ ամբոխ, որ ոչ գիտէ զօրէնս, անիծեալք են: *Ասէ Նիկոդեմոս ցնոսա՝ որ եկեալ էր առ նա գիշերի յառաջագոյն՝ եւ մի էր 'ի նոցանէ: *Միթէ օրէնքն մեր դատեն զմարդ՝ եթէ ոչ լուեն ինչ նախ 'ի նմանէ. կամ գիտեն զինչ գործէ: *Պատասխանի ետուն նմա եւ ասեն: միթէ եւ դու եւս Գալիլեացի՞ ես: քննեա, եւ տես. զի մարգարէ 'ի Գալիլեէ ոչ յառնէ: *Եւ գնացին իւրաքանչիւրոք 'ի տեղի իւր:

## ԳԼ: Ը:

Իսկ Յս գնաց 'ի լեառն Ձիթենեաց: *Եւ ընդ առաւօտն դարձեալ եկն 'ի տաճարն. եւ գայր առ նա ամ ժողովուրդն, եւ ուսուցանէր զնոսա: *Ածին դպիրքն եւ փարիսեցիք զկին մի ըմբռնեալ 'ի շնութեան: եւ կացուցեալ զնա առաջի՝ *Ասեն. կին այս ըմբռնեցաւ ինքն յայտնապէս շնացեալ է: *Եւ յօրէնսն Մովսէս մեզ պատուիրեաց զայսպիսիս քարկոծել: արդ դու զի՞նչ ասես վասն դորա: *Զայս ասէին փորձելով զնա՝ զի ունիցին զամբաստանութիւն զնմանէ: իսկ Յս 'ի խոնարհ նայելով գրէր մատամբն յերկիր: *Իսկ իբրեւ ստիպեցին հարցանելով զնա, հայեցեալ 'ի վեր՝ ասէ ցնոսա: անմեղն 'ի ձէնջ՝ նախ նա ընկեսցէ զքար 'ի վերայ դորա: *Եւ դարձեալ 'ի խոնարհ նայելով՝ գրէր յերկրի: *Նոքա լուեալ ելանէին մի ըստ միոջէ՝ սկսեալ յառաջնոցն մինչեւ 'ի վերջինսն. եւ մնաց միայն Յս, եւ կինն կայր առաջի նորա: *Պատասխանի ետ Յս՝ եւ ասէ ցնա. կին դու՝ ո՞ւր են, ոչ ոք զքեզ դատապարտեաց: *Եւ ասէ. ոչ Տէր: եւ ասէ Յս. եւ ոչ ես դատապարտեմ զքեզ. երթ՝ յայսմհետէ մի մեղանչեր: *Դարձեալ խօսեցաւ ընդ նոսա Յս, եւ ասէ: Ես եմ լոյս աշխարհի. որ գայ զկնի իմ, ընդ խաւար մի գնասցէ. այլ ընկալցի զլոյսն կենաց: *Ասեն ցնա փարիսեցիքն: դու վասն անձին քո վկայես՝ եւ վկայութիւն քո չէ ճշմարիտ: *Պատասխանի ետ Յս եւ ասէ ցնոսա: թէպէտ ես վկայեմ վասն անձին իմոյ՝ վկայութիւն իմ ճշմարիտ է. զի գիտեմ ուստի եկի՝ եւ յո՛ երթամ: բայց դուք ոչ գիտէք, ուստի գամ, կամ յո՛ երթամ: *Դուք ըստ մարմնոյ դատէք. ես ոչ դատեմ եւ ոչ զոք: *Թէպէտ եւ դատեմ ես զոք՝ դատաստանն իմ ճշմարիտ է. զի չեմ միայն, այլ ես՝ եւ որ առաքեացն զիս Հայր: *Եւ յօրէնսն իսկ ձեր գրեալ է՝ թէ երկուց մարդոց վկայութիւն ճշմարիտ է: *Ես եմ, որ վկայեմ վասն իմ եւ վկայէ վասն իմ, որ առաքեացն զիս Հայր: *Ասէին ցնա. ո՞ւր է Հայրն քո: պատասխանի ետ Յս եւ ասէ ցնոսա: ոչ զիս գիտէք՝ եւ ոչ զՀայրն իմ. եթէ զիս գիտէիք, եւ զՀայրն իմ թերեւս գիտէիք: *Զայս բանս խօսեցաւ 'ի տան գանձին՝ յորժամ ուսուցանէր 'ի տաճարի անդ՝ եւ ոչ ոք կալաւ զնա. զի չեւ եւս հասեալ էր ժամ նորա: *Ասէ դարձեալ ցնոսա Յս: ես երթամ, եւ խնդրիցէք զիս. եւ 'ի մեղս ձեր մեռանիցիք: զի ուր ես երթամ, դուք ոչ կարէք գալ: *Ասեն հրեայքն: մի թէ զիւրովին երթայցէ. զի ասէ, թէ ուր ես երթամ, դուք ոչ կարէք գալ: *Եւ ասէ ցնոսա: դուք 'ի ներքուստ աստի էք: եւ ես 'ի վերուստ անտի եմ: դուք յաշխարհէ աստի էք. ես չեմ յայսմ աշխարհէ: *Ասացի ձեզ՝ թէ 'ի մեղս ձեր մեռանիջիք. զի թէ ոչ հաւատայցէք թէ ես եմ, մեռանիջիք 'ի մեղս ձեր: *Ասեն ցնա՝ դու ո՞վ ես: ասէ ցնոսա Յս. նախ զի եւ խօսիմ իսկ ընդ ձեզ: *Բազում ինչ ունիմ վասն ձեր խօսել եւ դատել: այլ որ առաքեացն զիս՝ ճշմարիտ է: եւ ես զոր լուայ 'ի նմանէ. զայն խօսիմ յաշխարհի: *Եւ ոչ գիտացին թէ զՀայրն ասէր ցնոսա: *Ասէ ցնոսա Յս. յորժամ բարձրացուցանիցէք զՈրդի մարդոյ՝ յայնժամ

ժամ գիտասջիք եթէ ես եմ։ և յանձնէ իմմէ ինչ ոչ առնեմ. այլ որպ ուսոյց զիս Հայրն իմ, զայն խօսիմ։ 29 *Եւ որ առաքեացն զիս, ընդ իս է։ ոչ եթող զիս միայն. զի ես զհաճոյսն նորա առնեմ հանապազ։ 30 *Իբրև զայն խօսեցաւ՝ բազումք հաւատացին 'ի նա։

ԻՕ.

31 *Եւ ասէր Յս առ հրէայսն հաւատացեալս։ եթէ դուք կայջիք 'ի բանին իմում, ճշմարիտ աշակերտք իմ էք։ 32 *Եւ ծանիջիք զճշմարտութիւնն. և ճշմարտութիւն ազատեսցէ զձեզ։ 33 *Պատասխանի ետուն նմա և ասեն։ զաւակք աբրահամու եմք. և ոչ ումեք երբէք ծառայեցաք. զիա՞րդ ասես եթէ ազատք լինիջիք։ 34 *Պատասխանի ետ նոցա Յս։ ամէն ամէն ասեմ ձեզ. ‖ եթէ ամ, որ առնէ զմեղս, ծառայ է մեղաց։ 35 *Եւ ծառայն ոչ յաւիտեան կայ 'ի տանն. իսկ որդին յաւիտեան կայ։ 36 *Իսկ արդ եթէ Որդին զձեզ ազատեցուսցէ, ճշմարիտ ազատք լինիջիք։ 37 *Գիտեմ զի զաւակ աբրահամու էք։ այլ խնդրէք սպանանել զիս. զի բանին իմոյ չէք տեղի 'ի ձեզ։ 38 *Ես՝ զոր տեսի առ Հօր իմում, խօսիմ։ և դուք՝ զոր լուարուք 'ի Հօրէն ձերմէ՝ առնէք։ 39 *Պատասխանի ետուն նմա և ասեն։ Հայր մեր աբրահամ է։ ասէ ցնոսա Յս։ եթէ որդիք աբրահամու էիք՝ զգործս աբրահամու գործէիք։ 40 *Այլ այժմ խնդրէք սպանանել զիս. զայր մի, որ ձեզ զճշմարտութի խօսեցայ՝ զոր լուայ 'ի Հօրէ իմմէ։ զայդ աբրահամ ոչ արար։ 41 *Դուք առնէք զգործս հօրն ձերոյ։ ասեն ցնա. մեք 'ի պոռնկութէ չեմք ծնեալք. մի է հայր մեր Ած։ 42 *Ասէ ցնոսա Յս։ եթէ Ած էր հայր ձեր, սիրէիք արդեօք զիս. զի ես յԱյ ելի, և եկի. և ոչ եթէ յանձնէ ինչ եկի. այլ նա առաքեաց զիս։ 43 *Ընդէ՞ր զխօսս իմ ոչ գիտէք դուք. վասնզի ոչ կարէք լսել զբանն իմ։ 44 *‖ Դուք 'ի հօրէ սատանայէ էք. և զցանկութի հօրն ձերոյ կամիք առնել։ զի նա մարդասպան էր 'ի սկզբանէ. և 'ի ճշմարտութեն ոչ եկաց. զի ոչ գոյ ճշմարտութի 'ի նմա. յորժամ խօսիցի սուտ՝ յիւրոց անտի խօսի. զի սուտ է, և հայր նորա։ 45 *Իսկ ես, զի զճշմարտութի խօսիմ՝, ոչ հաւատայք ինձ։ 46 *Ո՞վ 'ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վն մեղաց. եթէ զճշմարտութի ասեմ ձեզ՝ ընդէ՞ր ոչ հաւատայք ինձ։ 47 *‖ Որ էն յԱյ՝ զբանս Այ լսէ։ և դուք վն այնորիկ ոչ լսէք, զի չէք յԱյ։ 48 *Պատասխանի ետուն հրէայքն, և ասեն ցնա։ ո՞չ բարւոք ասեմք մեք՝ եթէ սամարացի ես դու. և դև գոյ 'ի քեզ։ 49 *Պատասխանի ետ Յս և ասէ։ յիս դև ոչ գոյ՝ այլ պատուեմ զհայր իմ. և դուք անարգէք զիս։ 50 *Ես ոչ խնդրեմ զփառս իմ. է, որ խնդրէ՝ և դատէ։ 51 *Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ոք զբանն իմ պահեսցէ՝ զմահ մի տեսցէ 'ի յաւիտեան։ 52 *Ասեն ցնա հրէայքն։ արդ գիտացաք եթէ դև գոյ 'ի քեզ։ աբրահամ մեռաւ՝ և մարգարէքն. և դու ասես, եթէ ոք զբանն իմ պահեսցէ, մի ճաշակեսցէ զմահ 'ի յաւիտեան։ 53 *Մի թէ դու մեծ ինչ ո՞ք իցես քան զհայր մեր աբրահամ, որ մեռաւ՝ և մարգարէքն մեռան։ արդ դու զո՞ առնես զքեզ։ 54 *Պատասխանի ետ Յս. եթէ ես փառաւորեմ զանձն իմ, փառքն իմ ոչինչ են. է Հայր՝ որ փառաւորէ զիս. զորմէ դուքն ասէք թէ Ած մեր է։ 55 *Եւ ոչ ճանաչէք զնա. բայց ես գիտեմ զնա. և թէ ասեմ, թէ ոչ գիտեմ զնա՝ ձեզ նման սուտ լինիմ. այլ ես գիտեմ զնա. և զբան նորա պահեմ։ 56 *Աբրահամ հայր ձեր ցանկացաւ տեսանել զօր իմ. ետես, և ուրախ եղև։ 57 *Ասեն ցնա հրէայքն. յիսուն ամ չև ևս է քո. և զաբրահամ տեսե՞ր։ 58 *Ասէ ցնոսա Յս. ամէն ամէն ասեմ ձեզ. յառաջ քան զլինել աբրահամու եմ ես։ 59 *Վէմս առին, զի արկցեն 'ի վերայ նորա. և Յս խոյս ետ. և ել գնաց 'ի տաճարէ անտի։

Margin notes: Հռոմ. 6.15. և 16. — 2.Պետ. 2. 19. — Ա.Յօհ. 3. 8. — Ա.Յօհ. 4. 5. — ևելեալ գնաց

## ԳԼ: Թ։

ԻԱ.

1 Եւ մինչդեռ անցանէր՝ ետես զայր մի կոյր 'ի ծնէ։ 2 *Եւ հարցին ցնա աշակերտքն նորա՝ և ասեն. Ռաբբի, ո՞յր մեղաց է. սորա՞ թէ հօր և մօր իւրոյ, զի կոյր ծնցի։ 3 *Պատասխանի ետ Յս. ոչ դորա մեղաց է, և ոչ հօր և մօր իւրոյ. այլ զի յայտնի լիցին գործքն Այ 'ի դմա։ 4 *Եւ ինձ պարտ է գործել զգործս այնորիկ՝ որ առաքեացն զիս, մինչ օր կայ. գայ գիշեր, յորժամ ոչ ոք կարէ գործել։ 5 *Մինչդեռ յաշխարհի եմ, լոյս եմ աշխարհի։ 6 *Զայս իբրև ասաց, եթուք 'ի գետին. և արար կաւ 'ի թքոյն. և ծեփեաց զկաւն 'ի վերայ աչաց կուրին. 7 *Եւ ասէ ցնա. երթ, լուա՛ յաւազանին սելովմայ. (որ թարգմանի առաքեալ.) չոքաւ, լուացաւ՝ եկն և տեսանէր։ 8 *Իսկ դրացիքն՝ և որոց տեսեալ էր զնա յառաջագոյն եթէ մուրացիկ էր, ասէին. ո՞չ սա էր՝ որ նստէրն և մուրանայր։ կէսքն ասէին. նա է։ 9 *Այլքն ասէին. ոչ, այլ նման է նմա.



10 և ինքն ասէր՝ թէ ես եմ։ *Ասեն ցնա․ իսկ զիա՞րդ բացան աչք քո։
11 *Նա ետ պատասխանի․ այր մի, որում Յիսուն ասեն, կաւ արար, և ծեփեաց զաչս իմ․ և ասէ ցիս․ երթ ՚ի սեղովամ, և լուա՛․ չոգայ՝ լուացայ՝ և տեսանեմ։
12 *Ասեն ցնա․ ո՞ւր է նա․ ասէ ցնոսա՝ ոչ գիտեմ։
13 *Ածին առ փարիսեցիսն զնա, որ երբեմն կոյրն էր։
14 *Եւ էր շաբաթ յորժամ զկաւն արար Յս․ և եբաց զաչս կուրին։
15 *Դարձեալ հարցանէին զնա փարիսեցիքն, թէ զիա՞րդ տեսանես․ և նա ասէ ցնոսա․ կաւ եդ ՚ի վր աչաց իմոց․ և լուացայ, և տեսանեմ։
16 *Ասեն ոմանք ՚ի փարիսեցւոցն․ ոչ է այրն այն յԱյ․ զի զշաբաթ ոչ պահէ։ կէսքն ասէին․ իսկ զիա՞րդ կարէ մարդ մեղաւոր այսպիսի նշանս առնել։ և էին հերձուածք ՚ի մէջ նոցա։
17 *Ասեն դարձեալ ցկոյրն․ դու զի՞ ասես վասն նորա՝ զի եբաց զաչս քո։ և նա ասէ թէ մարգարէ է։
18 *Եւ ոչ հաւատային հրեայքն զնմանէ՝ եթէ կոյր էր՝ և բացաւ․ մինչև կոչեցին զծնօղս բացելոյն։
19 *Հարցին ցնոսա և ասեն․ սա՞ է որդին ձեր, զորմէ դուքն ասէիք, թէ կոյր ծնաւ․ արդ՝ զիա՞րդ տեսանէ։
20 *Պատասխանի ետուն նոցա ծնօղքն նորա՝ և ասեն․ գիտեմք՝ զի սա է որդին մեր․ և զի կոյր ծնաւ։
21 *Բայց զիարդ այժմիկ տեսանէ՝ ոչ գիտեմք․ կամ թէ ո՞վ եբաց զաչս դորա՝ մեք ոչ գիտեմք․ ցդա՛ իսկ հարցէք․ ինքնին ՚ի չափ հասեալ է․ ինքն իսկ խօսեսցի վասն իւր։
22 *Զայս ասացին ծնօղքն նորա՝ զի երկնչէին ՚ի հրէիցն․ քանզի ուխտ եդեալ էր հրէից․ եթէ ոք խոստովանեսցի զնա Քս՝ ՚ի բաց կացցէ ՚ի ժողովրդենէն։
23 *Վասն այնորիկ ասացին ծնօղքն նորա, եթէ ինքնին ՚ի չափ հասեալ է՝ զնա իսկ հարցէք։
24 *Դարձեալ կրկին անգամ կոչեցին զայրն, որ կոյրն էր, և ասեն ցնա․ տուր փառս Այ․ մեք գիտեմք՝ զի այրն այն մեղաւոր է։
25 *Եւ նա ասէ․ թէ մեղաւոր իցէ՝ ես ոչ գիտեմ․ բայց զայս գիտեմ, զի կոյր էի՝ և արդ տեսանեմ։
26 *Դարձեալ ասեն ցնա․ զի՞նչ արար քեզ․ զիա՞րդ եբաց զաչս քո։
27 *Պատասխանի ետ նոցա․ այժմ՝ ասացի ձեզ՝ և ոչ լուայք․ զի՞ կամիք միւս անգամ լսել․ միթէ և դուք կամիք աշակերտել նմա։
28 *Նոքա հայհոյէին զնա՝ և ասէին․ դու լիջիր նորա աշակերտ․ մեք մովսէսի աշակերտք եմք։
29 *Մեք գիտեմք՝ զի ընդ մովսէսի խօսեցաւ Այ․ զսա ոչ գիտեմք ուստի իցէ։
30 *Պատասխանի ետ այրն, և ասէ ցնոսա․ այդ իսկ են սքանչելիք, զի դուք ոչ գիտէք՝ ուստի իցէ, և զիմ զաչս եբաց։
31 *Գիտեմք՝ զի Այ մեղաւորաց ոչ լսէ․ բայց եթէ Այապաշտ ոք իցէ, և զկամս նորա առնիցէ՝ նմա լսէ։
32 *Յաւիտենից ոք ոչ լուաւ՝ եթէ եբաց ոք զաչս կուրի ՚ի ծնէ կոյր ծնելոյ։
33 *Եթէ ոչ յԱյ էր այրն այն՝
34 ոչ կարէր առնել ինչ։ *Պատասխանի ետուն և ասեն ցնա․ ՚ի մեղս իսկ ծնեալ ես ամենևին․ և դու վարդապետ լինիս մեր։ և հանին զնա արտաքս։
35 *Լուաւ Յս եթէ հանին զնա արտաքս․ և իբրև եգիտ զնա՝ ասէ ցնա․
36 դու հաւատա՞ս յորդի Այ։ *Նա պատասխանի ետ և ասէ․ Տր, ո՞վ է զի հաւատացից ՚ի նա։
37 *Ասէ ցնա Յս․ և տեսեր զնա, և որ խօսիդ ընդ քեզ՝
38 նա է։ *Եւ նա ասէ․ հաւատամ, Տր․ և երկիր եպագ նմա։
39 *Եւ ասէ Յս, ՚ի դատաստան եկի յաշխարհս յայս․ զի որք ոչն տեսանեն, տեսցեն․ և որք տեսանենն, կուրասցին։
40 *Լուան ոմանք ՚ի փարիսեցւոցն, որք ընդ նմա էին, և ասեն ցնա․ միթէ և
41 մեք կո՞յրք իցեմք։ *Ասէ ցնոսա Յս․ եթէ կոյրք էիք՝ ոչ էր ձեր մեղ․ բայց արդ ասէք, եթէ տեսանեմք՝ և մեղքն ձեր ՚ի ձեզ հաստատեալ են։

Օ.Կ

## Գլ։ Ժ.

1 Ամէն ամէն ասեմ ձեզ. որ ոչ մտանէ ընդ դուռն 'ի գաւիթ ոչխարաց, այլ ընդ այլ ելանէ, նա գող է, և աւազակ։ 2 * Իսկ որ մտանէ ընդ դուռն, հովիւ է ոչխարաց։ 3 * Նմա դռնապանն բանայ. և ոչխարքն ձայնի նորա լսեն. և զիւր զոչխարսն կոչէ յանուանէ, և հանէ զնոսա։ 4 * Եւ յորժամ զիւրն զամ հանիցէ՝ առաջի նոցա երթայ. և ոչխարքն զհետ նր երթան, զի ճանաչեն զձայն նորա։ 5 * Զօտարի զհետ ոչ երթիցեն, այլ փախիցեն 'ի նմանէ. զի ոչ ճանաչեն զձայն օտարաց։ 6 * Զայս առակ ասաց նց Յս։ և նոքա ոչ գիտէին, եթէ զինչ էր՝ որ խօսէրն ընդ նոսա։ 7 * Դարձեալ ասէ ցնս Յս։ ամէն ամէն ասեմ ձեզ. ես եմ դուռն ոչխարաց։ 8 * Ամենեքեան՝ որք յառաջ քան զիս եկին՝ գողք էին, և աւազակք. այլ ոչ լուան նոցա ոչխարքն։ 9 * Ես եմ դուռն. ընդ իս եթէ ոք մտանիցէ՝ կեցցէ. մտցէ, և ելցէ, և ճարակ գտցէ։ 10 * Գող ոչ գայ՝ եթէ ոչ զի գողասցի, և սպանցէ, և կորուսցէ. ես եկի զի զկեանս ունիցին. և առաւել ևս ունիցին։

Օր.

11 * Ես եմ հովիւն քաջ. ‖ հովիւ քաջ զանձն իւր դնէ 'ի վերայ ոչխարաց։ 12 * Իսկ վարձկանն, որ ոչէ հովիւ, որոյ ոչ իւր են ոչխարքն, իբրև տեսանէ զգայլն զի գայ՝ թողու զոչխարսն և փախչի. և գայլն յափշտակէ զնոսա և ցրուէ։ 13 * Քանզի վարձկան է, և չէ փոյթ նմա վն ոչխարացն։ 14 * Ես եմ հովիւն քաջ. և ճանաչեմ զիմսն, և ճանաչիմ յիմոցն։ 15 * ‖ Որպէս գիտէ զիս Հայր, գիտեմ և ես զՀայր. և զանձն իմ դնեմ 'ի վերայ ոչխարաց։ 16 * Եւ այլ ևս ոչխարք են իմ, որք ոչ են յայսմ գաւթէ. և զայն ևս պարտ է ինձ ածել այսր. և ձայնի իմում լուիցեն. և եղիցին մի հօտ՝ և մի հովիւ։ 17 * Վասն այնորիկ սիրէ զիս Հայր իմ. ‖ զի ես դնեմ զանձն իմ, զի միւսանգամ առից զնա։ 18 * Ոչ՛ոք հանէ զնա յինէն. այլ ես դնեմ զնա անձամբ իմով. իշխանութի ունիմ դնել զնա. և իշխանութի ունիմ միւսանգամ առնուլ զնա. զայս պատուէր առի 'ի հօրէ իմմէ։ 19 * Դարձեալ հերձուած լինէր 'ի մէջ հրէից վն բանիցս այսոցիկ։ 20 * Եւ ասէին բազումք 'ի նոցանէ. դև գոյ 'ի նմա՝ և մոլեգնի. զի՞ լսէք նմա։ 21 * Այլք ասէին. այսպիսիք բանք ոչ են դիւահարի. միթէ դև կարէ զաչս կուրի բանալ։

‖ Եսայ. 40.11. Եզեկ. 34. 23. և 37.24.
‖ Մատթ. 11.27. Ղուկ. 10. 22.
‖ Եսայ. 53. 7.

22 * ‖ Եղեն յայնժամ նաւակատիքն յԵմ, և ձմեռն էր։ 23 * Եւ շրջէր Յս 'ի տաճարին, 'ի սրահին Սողոմոնի։ 24 * Շուրջ եղեն զնովաւ հրէայքն և ասեն. մինչև յերբ թափես զոգիս մեր. եթէ դու ես Քն՝ ասա՛ մեզ համարձակ։ 25 * Պատասխանի ետ նոսա Յս և ասէ. ասացի ձեզ՝ և ո՛չ հաւատայք ինձ. զգործսն, զորս ես գործեմ յանուն Հօր իմոյ՝ նոքին իսկ վկայեն վն իմ։ 26 * Այլ դուք ո՛չ հաւատայք. զի չէ՛ք յոչխարաց անտի իմոց։ 27 * Ոչխարք իմ ձայնի իմում լսեն. և ես ճանաչեմ զնոսա. և զկնի իմ գան։ 28 * Եւ ես տամ նոցա զկեանսն յաւիտենականս. և մի՛ կորիցեն 'ի յաւիտեանս. և մի՛ոք յափշտակեսցէ զնոսա 'ի ձեռաց իմոց։ 29 * Հայր իմ, որ ետ ինձ զնոսա՝ մեծ է քան զամենայն. և ոչ՛ոք կարէ յափշտակել 'ի ձեռաց Հօր իմոյ։ 30 * Ես և Հայր իմ մի եմք։ 31 * Վէմս առին հրէայքն, զի քարկոծ արասցեն զնա։ 32 * Պատասխանի ետ նց Յս. բազում գործս բարիս ցուցի ձեզ 'ի Հօրէ իմմէ՝ վասն որո՞յ գործոյ 'ի նոցանէ քարկոծ առնէք զիս։ 33 * Պատասխանի ետուն նմա հրէայքն. վն բարւոյ գործոյ ո՛չ առնեմք զքեզ քարկոծ, այլ վասն հայհոյութե. և զի դու մարդ ես՝ և զանձն քո Աձ առնես։ 34 * Պատասխանի ետ նոցա Յս. ո՞չ յօրէնս ձեր գրեալ է, ‖ ես ասացի թէ աստուածք իցէք։ 35 * Իսկ եթէ զնս աստուածս ասէ՝ առ որս բանն Այ եղև. և չէ մարթ եղծանիլ գրոյն։ 36 * Իսկ զոր Հայր սրբեաց՝ և առաքեաց յաշխարհ. դուք ասէք՝ թէ հայհոյես. զի ասացի՝ թէ Որդի Այ եմ։ 37 * Եթէ ոչ գործեմ զգործս հօր իմոյ՝ 38 մի՛ հաւատայք ինձ։ * Ապա թէ գործեմ, թէ և ինձ ո՛չ հաւատայք, սակայն գործոցն հաւատացէ՛ք. զի գիտասջիք, և ծանիջիք՝ եթէ հայր յիս է, 39 և ես 'ի Հայր։ * Դարձեալ խնդրէին զնա ունել՝ և ել 'ի ձեռաց նոցա։ 40 * Եւ գնաց միւսանգամ յայնկոյս յոր դանանու՝ 'ի տեղին, ուր էր Յօհաննէս զառաջինն՝ և մկրտէր. և անդ 41 լինէր։ * Եկին բազումք առ նա՝ և ասէին. զի յօհաննէս նշան ինչ ո՛չ արար։ 42 * Բայց զամ, զոր ասաց յօհաննէս վն նորա՝ ճշմարիտ էր. և բազումք հաւատացին 'ի նա անդ։

Օր.
‖ 1. Մակ. 4.56. և 59.
‖ Սաղմ. 81.6.

## Գլ։ ԺԱ.

1 Էր ոմն հիւանդ՝ Ղազարոս 'ի Բեթանիայ, 'ի գեղջէ Մարիամայ, և Մարթայի քեռ նորա։

Օր.

*Այս

‖ Մտթ. 26. 7. Ղուկ. 7. 37. Մրկ. 12. 3.

2 *(Այս այն Մարիամն էր՝ ‖ որ եօծ զՏրն իւղով՝ և ջնջեաց զոտս նորա հերօք իւրովք. որոյ եղբայրն Ղազարոս հիւանդ էր։) 3 *Յուղարկեցին առ նա քորքն նորա՝ և ասեն. Տր, ահաւասիկ զոր դուն սիրէիր՝ հիւանդացեալ է։ 4 *Իբրև լուաւ Յս, ասէ. այն հիւանդութիւն չէ ՚ի մահ. այլ վասն փառացն Այ, զի փառաւոր լիցի Որդի Այ այնուիկ։ 5 *Եւ սիրէր Յս զՄարիամ, և զՄարթայ զքոյր նր՝ և զՂազար։ 6 *Իբրև լուաւ, թէ հիւանդացեալ է՝ զտեղի կալաւ անդէն ուր էրն, աւուրս երկուս։ 7 *Ապա յետ այնորիկ ասէ ցնոսա. եկա՛յք երթիցուք միւսանգամ ՚ի Հրէաստան։ 8 *Ասեն ցնա աշակերտքն. Ռա՛բբի՝ այժմ ևս խնդրէին զքեզ Հրէայքն քարկոծ առնել. և դարձեա՞լ երթաս անդրէն։

9 *Պատասխանի ետ Յս. ո՞չ երկոտասան ժամ է աւուր. եթէ ոք գնայ ՚ի տուընջեան, ո՛չ գայթագղի. զի զլոյս աշխարհիս այսորիկ տեսանէ։

10 *Ապա թէ ոք գնայ ՚ի գիշերի՝ գայթագղի, զի լոյս ո՛չ գոյ ընդ նմա։

11 *Զայս իբրև ասաց, յետ այսորիկ ասէ. Ղազարոս բարեկամ մեր ննջեաց. այլ երթամ, զի զարթուցից զնա։

12 *Ասեն ցնա աշակերտքն նորա. Տր եթէ ննջեաց՝ ապա ապրի։ 13 *Այլ Յս վասն մահու նորա ասէր. նոցա այսպէս թուեցաւ՝ թէ վասն ննջելոյ քնոյն ասէր։ 14 *Յայնժամ՝ ասէ ցնոսա Յս յայտնապէս. Ղազարոս մեռաւ։

15 *Եւ ես ուրախ եմ վասն ձեր. զի դուք հաւատասջիք ինձ, զի ես չէի անդ. բայց արդ՝ եկա՛յք երթիցուք առ նա։

16 *Ասէ Թովմաս, անուանեալն Երկուորեակ՝ ցաշակերտակիցսն, ե՛ն, եկա՛յք և մեք՝ զի ընդ նմա մեռցուք։

17 *Եկն Յս՝ և եգիտ զնա չորեքօրեայ ՚ի գերեզմանի։ 18 *(Եւ էր Բեթանիա մերձ յԵղմ, իբրև ասպարիսօք հնգետասան։) 19 *Բազումք ՚ի Հրէից անտի, եկեալ էին առ Մարթայ և Մարիամ, զի մխիթարեսցեն զնոսա վս եղբօրն։

20 *Մարթա իբրև լուաւ, թէ Յս գայ, ընդառաջ գնաց նորա. բայց Մարիամ նստէր անդէն ՚ի տան։ 21 *Ասէ Մարթա ցՅս. Տր, եթէ աստ լեալ էիր, եղբայրն իմ չէր մեռեալ։

22 *Այլ և արդ գիտեմ, եթէ զորինչ խնդրեսցես յԱյ՝ տացէ քեզ Ած։

‖ Վեր. 6. 40. Ղուկ. 14. 14.

23 *Ասէ ցնա Յս. յարիցէ եղբայրն քո։ 24 *Ասէ ցնա Մարթա. գիտեմ, զի յարիցէ ‖ ՚ի յարութեան յաւուրն յետնում։ 25 *Ասէ ցնա Յս. ես իսկ եմ յարութիւն և կեանք. ‖ որ հաւատայ յիս, թէպէտ

‖ Վեր. 5. 29.

26 և մեռանի՝ կեցցէ։ *Եւ ամ, որ կենդանի է՝ և հաւատայ յիս, մի՛ մեռցի ՚ի յաւիտեան. հաւատա՞ս այսմիկ։

27 *Ասէ ցնա. այո՛ Տր. ես հաւատացի, եթէ դու ես Քսն Որդի Այ, որ յաշխարհ 28 գալոց էիր։ *Եւ զայս իբրև ասաց՝ գնաց, և կոչեաց զՄարիամ զքոյր իւր լռելեայն՝ և ասէ. վարդապետն եկեալ է, և կոչէ զքեզ։

29 *Նա իբրև լուաւ՝ յարեաւ վաղվա- 30 ղակի, և եկն առ նա։ *Չև ևս էր եկեալ Յս ՚ի գեօղն. այլ էր անդէն ՚ի տեղւոջն՝ ուր ընդառաջ եղև նմա Մար- 31 թա։ *Իսկ Հրէայքն, որք էին ընդ նմա ՚ի տան անդ՝ և մխիթարէին զնա, իբրև տեսին զՄարիամ թէ յարեաւ վաղվաղակի, և գնաց, գնացին և նոքա զհետ նորա. համարէին թէ ՚ի գերեզմանն երթայ՝ զի լացցէ անդ։

32 *Իսկ Մարիամ իբրև եկն, ուր էրն Յս, և ետես զնա՝ անկաւ առ ոտս նր և ասէ. Տր, եթէ աստ էիր դիպեալ՝ ո՛չ էր մեռեալ եղբայրն իմ։

33 *Յս իբրև ետես զնա զի լայր, և որք ընդ նմա էին Հրէայքն, լային՝ խռովեցաւ յոգի իւր իբրև զայրացեալ։

34 *Եւ ասէ, ո՞ւր եդիք զնա։ ասեն ցնա՝ 35 Տր, եկ, և տես։ *Եւ արտասուեաց 36 Յս։ *Ասէին Հրէայքն. տեսէ՛ք, որ- 37 չափ սիրէր զնա։ *Եւ էաքն ՚ի նոցանէ ասէին. ‖ ո՞չ կարէր սա, որ եբաց զաչս կուրին, առնել զի և սա մի՛ մեռցի։

‖ Վեր. 9. 6.



*Յս

38 *Յս դարձեալ զայրացեալ ընդ միտս իւր, գայ 'ի գերեզմանն. և էր այր մի, և վէմ մի եդեալ 'ի վերայ նորա։
39 *Եւ ասէ Յս 'ի բաց արարէք զվէմդ։ ասէ ցնա մարթա, քոյր մեռելոյն։ Տր, արդ հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ է։ 40 *Ասէ ցնա Յս. ոչ ասացի քեզ՝ եթէ հաւատասցես, տեսցես զփառս Այ։ 41 *Եւ իբրև 'ի վեր առին զվէմն. Յս ամբարձ զաչս իւր 'ի վեր, և ասէ. Հայր, գոհանամ զքէն, զի լուար ինձ։
42 *Եւ ես գիտէի՝ զի յամենայն ժամ լսես ինձ. այլ վասն ժողովրդեանս, որք շուրջ կան՝ առնեմ, զի հաւատասցեն թէ դու առաքեցեր զիս։
43 *Զայս իբրև ասաց՝ 'ի ձայն մեծ աղաղակեաց՝ և ասէ. ղազարէ, արի, եկ արտաքս։ 44 *Եւ ել մեռեալն ոտիւք կապելովք. և ձեռօքն երիզապնդովք. և երեսօքն վարշամակապատովք. և ասէ ցնոսա Յս. լուծէք զդա, և թողէք երթալ։
45 *Բազումք 'ի հրէիցն՝ որք եկեալ էին առ մարիամ, իբրև տեսին՝ զոր արարն՝ հաւատացին 'ի նա։ 46 *Եւ ոմանք 'ի նոցանէ գնացին առ փարիսեցիսն, և պատմեցին նոցա՝ զոր արարն Յս։

Օ.Օ.

47 *Ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիք յատեան, և ասեն. զինչ արասցուք՝ զի այրն այն բազում նշանս առնէ։ 48 *Եթէ թողումք զնա այնպէս, ամենեքին հաւատան 'ի նա. և գայցեն հռոմք՝ և բառնայցեն զազգս մեր՝ և զտեղի։ 49 *‖ Միոմն 'ի նոցանէ անուն կայիափայ, որ քահանայապետ էր տարւոյն այնորիկ, ասէ ցնոսա. դուք ոչինչ գիտէք։ 50 *Եւ ոչ բնաւ խորհիլ իսկ, թէ լաւ է մեզ՝ զի այր մի մեռանիցի 'ի վերայ ժողովրդեանս, և մի ամ ազգս կորիցէ։ 51 *Զայս ոչ յանձնէ ինչ ասաց. այլ զի քահանայապետ էր տարւոյն այնորիկ, մարգարէացաւ՝ եթէ մեռանելոց էր Յս 'ի վերայ ազգին։
52 *Եւ ոչ 'ի վերայ ազգին միայն, այլ զի և զորդիսն Այ զցրուեալսն՝ ժողովեսցէ 'ի մի։ 53 *Ապա յայնմ օրէ խորհուրդ արարին, զի սպանցեն զնա։
54 *Եւ Յս այնուհետև ոչ եթէ համարձակ շրջէր 'ի մէջ հրէիցն. այլ գնաց անտի յերկիր մի, որ մերձ էր յանապատ. 'ի քաղաք մի, որում անուն էր եփրայիմ, և անդ լինէր աշակերտօքն հանդերձ։

‖ Մար. 18. 14.

Օ.Ի.

55 *Եւ էր մերձ զատիկն հրէից. և բազումք ելին յեմ 'ի գաւառէ անտի յառաջագոյն քան զզատիկն, զի սրբեսցեն զանձինս իւրեանց։ 56 *Խնդրէին զՅս, և ասէին ընդ միմեանս՝ մինչ կային 'ի տաճարին. զիա՞րդ թուի ձեզ՝ եթէ ոչ գայցէ 'ի տօնս այսր։ 57 *Պատուէր տուեալ էր քահանայապետիցն և փարիսեցւոց, զի թէ ոք գիտասցէ թէ ուր է՝ դուշակեսցեն զնմանէ, զի կալցեն զնա։

## Գլ. ԺԲ.

1 Իսկ Յս վեց աւուրբք յառաջ քան զզատիկն եկն 'ի բեթանիա, ուր էր ղազար մեռեալն, զոր յարոյցն 'ի մեռելոց։ 2 *Եւ արարին անդ նմա ընթրիս. և 'ի սպասու կայր մարթա. և ղազար մի էր 'ի բազմելոց ընդ նմա։
3 *Իսկ մարեմայ առեալ ղիտր մի իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, եօծ զոտսն Յի. և հերօք իւրովք մաքրէր զոտս նորա։ և տունն լի եղև 'ի հոտոյ իւղոյն։ 4 *Ասէ միոմն յաշակերտաց անտի յուդա իսկարիովտացի, որ մատնելոցն էր զնա։ 5 *Ընդէ՞ր ոչ իւղդ այդ վաճառեցաւ երեք հարիւր դենարի, 6 և տուաւ աղքատաց։ *Զայս ասաց՝ ոչ զի աղքատաց ինչ փոյթ էր նմա. այլ զի գող էր՝ և զարկղն ինքն ունէր։ և որինչ անկանիւրն, նա կրէր։
7 *Ասէ Յս։ թո՛յլ տուք դմա, զի յօրն պատանաց իմոց պահեսցէ զայդ։
8 *Զաղքատս յամ ժամ ընդ ձեզ ունիք. զիս ոչ հանապազ ընդ ձեզ ունիք։
9 *Իբրև գիտաց ժողովուրդ բազում 'ի հրէից թէ անդ է, եկին, ոչ միայն վասն Յի, այլ զի և զղազար տեսցեն. 10 զոր յարոյցն 'ի մեռելոց։ *Խորհուրդ արարին քահանայապետքն՝ զի և զղազար 11 սպանցեն։ *Քանզի բազումք 'ի հրէից երթային՝ և հաւատային 'ի Յս։

Ի.Կ

12 *'Ի վաղիւն անդր ժողովուրդ բազում, որ եկեալ էր 'ի տօնն, իբրև լուան թէ 13 գայ Յս յեմ։ *Առին ոստս արմաւենեաց՝ և ելին ընդ առաջ նր. աղաղակէին և ասէին։ ովսաննայ. օրհնեալ որ գասդ յանուն Տն. թագաւորդ իլի։
14 *‖ Եւ գտեալ Յն էշ մի, նստաւ 'ի վր 15 նորա. որպէս և գրեալ է։ *Մի երկնչիր դուստր սիոնի։ ահաւադիկ թագաւոր քո գայ նստեալ 'ի վերայ յաւանակի 16 իշոյ։ *Եւ զայն ինչ ոչ գիտացին աշակերտքն նր յառաջինն. այլ յորժամ փառաւորեցաւ Յս՝ յայնժամ յիշեցին եթէ այն էր՝ որ գրեալն էր վասն նր. և զայն արարին նմա։
17 *Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ նմա, թէ զղազար կոչեաց և եթ 'ի գերեզմանէն. և յարոյց զնա 'ի մեռելոց։
18 *Եւ վն այնորիկ ընդ առաջ եղև նմա ժողովուրդն. զի լուան եթէ զայն 19 նշանս արարեալ էր նր։ *Իսկ փարիսեցիքն ասէին ընդ միմեանս։ տեսանէք՝

‖ Մատ. 26. 3. Մարկ. 14. 3.

‖ Մատ. 21. 5. Մարկ. 11. 7. Ղուկ. 19. 35. Զաքար. 9. 9.

նէք՝ զի ոչինչ օգտիք. ահաւասիկ աշխարհ համօրէն զկնի նր̅ գնաց։ 20 *Էին անդ ոմանք և հեթանոսք յելելոց անտի, զի երկիրպագանիցեն 'ի տօնին։

21 *Նոքա մատեան առ Փիլիպպոս՝ որ 'ի Բեթսայիդայ Գալիլեացւոց էր, աղաչէին զնա և ասէին. Տ̅ր, կամիմք զՅս̅ տեսանել։ 22 *Գայ Փիլիպպոս և ասէ ցԱնդրէաս. Անդրէաս և Փիլիպպոս ասեն ցՅս̅։ 23 *Եւ Յս̅ պատասխանի ետ նոցա և ասէ. Եհաս ժամ, զի փառաւորեսցի Որդի մարդոյ։

Ի.Բ.

24 *Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ոչ հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի, 25 *ինքն միայն կայ. ապա եթէ մեռանիցի, բազում արդիւնս առնէ։ ‖ որ սիրէ զանձն իւր՝ արձակէ զնա. և որ ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ՝ 'ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա։ 26 *Եթէ ոք զիս պաշտեսցէ, զկնի իմ եկեսցէ. և ուր եմն ես, անդ և պաշտօնեայն իմ եղիցի. եթէ ոք զիս պաշտիցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ։

Ի.Գ.

27 *Բայց այժմ անձն իմ խռովեալ է. և զի՞նչ ասացից. եթէ Հայր՝ ապրեցո՛ զիս 'ի ժամէ աստի յայսմանէ. այլ վասն այնորիկ եկի ես 'ի ժամս յայս։ 28 *Հա՛յր, փառաւորեա՛ զանուն քո. եկն բարբառ յերկնից. և փառաւոր արարի. և դարձեալ փառաւոր արարից։ 29 *Եւ ժողովուրդն, որ կայր, և լսէր՝ ասէին որոտումն լինել. կէսքն ասէին, հրեշտակ խօսեցաւ ընդ նմա։ 30 *Պատասխանի ետ Յս̅ և ասէ. ո՛չ վն̅ իմ ինչ եկն բարբառս այս. այլ վասն ձեր։ 31 *Այժմիկ դատաստան է աշխարհիս այսորիկ. այժմիկ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի արտաքս։ 32 *Եւ ես յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս։ 33 *(Զայս ասէր, նշանակեալ՝ թէ որով մահու մեռանելոց իցէ։) 34 *Պատասխանի ետ նմա ժողովուրդն. մեք լուաք ‖ յօրինացն՝ եթէ Քս̅ն յաւիտեան կայ. և դու զիա՞րդ ասես՝ եթէ պարտ է բարձրանալ Որդւոյ մարդոյ. ո՞վ է այն որդին մարդոյ։ 35 *Ասէ ցնս̅ Յս̅. փոքր մի ևս ժամանակ լոյս ընդ ձեզ է. գնացէք՝ մինչդեռ զլոյսն ունիք, զի մի՛ խաւար ձեզ հասցէ. զի որ գնայ 'ի խաւարի, ո՛չ գիտէ յո՛ երթայ։

36 *Մինչդեռ զլոյսն ընդ ձեզ ունիք՝ հաւատացէք 'ի լոյսն, զի որդիք լուսոյ եղիջիք. զայս խօսեցաւ Յս̅. և չոգաւ՝ թաքեաւ 'ի նոցանէ։ 37 *Եւ այնչափ նշանս արարեալ էր առաջի նր̅. և նոքա ո՛չ հաւատային 'ի նա։ 38 *Զի լցցի բանն Եսայեայ մարգարէի՝ զոր ասացն. ‖ Տ̅ր, ո՛ հաւատաց 'ի լուր մեր. և բազուկ Տ̅ն ո՞ւմ յայտնեցաւ։ 39 *Վն̅ այնորիկ ո՛չ կարէին հաւատալ 'ի նա. զի միւս անգամ ասէ Եսայի։ 40 *‖ Թէ կուրացոյց զաչս նր̅. և ապշեցոյց զսիրտս նոցա. ‖ զի մի՛ տեսցեն աչօք. և իմասցին սրտիւք. և դարձցին, և բժշկեցից զնոսա։

41 *Զայս ասաց Եսայի, յորժամ ետես զփառսն նր̅. և խօսեցաւ վասն նր̅։ 42 *Բայց սակայն և յիշխանաց անտի բազումք հաւատացին 'ի նա. այլ վասն փարիսեցւոցն ո՛չ յայտնէին. զի մի՛ 'ի ժողովրդենէն ելանիցեն։ 43 *Քանզի սիրեցին զփառս մարդկան առաւել քան զփառսն Ա̅յ։

Ի.Դ.

44 *Եւ Յս̅ աղաղակէր, և ասէր. որ հաւատայ յիս՝ ո՛չ հաւատայ յիս, այլ յայն՝ 45 որ առաքեացն զիս։ *Եւ որ տեսանէ զիս, զայն տեսանէ՝ որ առաքեացն 46 զիս։ *Ես լոյս՝ յաշխարհ եկի. զի ա՛մ, որ հաւատայ յիս, 'ի խաւարի մի՛ մնասցէ։ 47 *Եւ եթէ ոք լուիցէ բանից իմոց, և ոչ պահեսցէ, ես ո՛չ դատեմ՝ զնա. քանզի ոչ եկի, թէ դատեցից զաշխարհ. այլ զի փրկեցից զաշխարհ։ 48 *Որ անարգէ զիս, և ո՛չ ընդունի զբանս իմ. գոյ՝ որ դատէ զնա. ‖ բանն, զոր ես խօսեցայ, նա դատէ զնա յաւուրն յետնում։ 49 *Զի ես յանձնէ իմ մէ ոչ խօսեցայ. այլ որ առաքեացն զիս Հայր, նա ետ ինձ պատուէր՝ զի՛նչ ասացից՝ և զի՛նչ խօսեցայց։ 50 *Եւ գիտեմ, թէ պատուէրն այն կեանք են յաւիտենականք. ա՛րդ՝ զոր ես խօսիմ, որպէս ասաց ինձ Հայրն՝ այնպէս խօսիմ։

## ԳԼ. ԺԳ.

Ի.Ե.

1 Յառաջագոյն ‖ քան զտօնն զատկի, գիտաց Յս̅, թէ հասեալ է ժամ նր̅՝ զի փոխեսցի յաշխարհէ աստի առ Հայր. սիրեաց զիւրսն, որք յաշխարհի աստ էին. 'ի սպառ սիրեաց զնոսա։ 2 *Եւ 'ի լինել ընթրեացն, սատանայի իսկ արկեալ էր 'ի սիրտ, զի մատնեսցէ զնա Յուդա Սիմօնի իսկարիովտացւոյ։ 3 *Գիտաց Յս̅՝ զի զա՛մ ինչ ետ Հայր 'ի ձեռս նր̅. և թէ յԱ̅յ ել՝ և առ Ա̅ծ երթայ։ 4 *Յառնէ յընթրեաց անտի, և դնէ զհանդերձսն. և առեալ զղենջակ մի՝ սփածաւ։ 5 *Եւ ապա առեալ զջուր՝ էարկ 'ի կոնք. և սկսաւ լուանալ զոտս աշակերտացն. և սրբէր ղենջակաւն՝ զոր սփածեալն էր։ 6 *Գայ առ Սիմօն Պետրոս. և նա ասէ ցնա, Տ̅ր, դո՛ւ զիմ զոտս լուանաս։ 7 *Պատասխանի ետ նմա Յս̅ և ասէ. զորինչ ես գործեմ, դու այժմ ո՛չ գիտես. բայց յապայ գիտասջիր։

*Ասէ

‖ Մատթ. 10. 39. և 16.25 Մարկ. 8. 35. Ղուկ. 9. 24. և 17. 33.
‖ Սաղմ. 109. 4. և 116.2 Եսայ. 40. 8. Եզեկի. 37. 25.
‖ Եսայ. 53. 1. Հռովմ. 10. 16.
‖ Եսայ. 6. 9. Մատթ. 13. 14. Մարկ. 4.12. Ղուկ. 8. 10. Գործ. 28.26. Հռովմ. 11.8.
‖ Մատթ. 16.16.
‖ Մատթ. 26. 2. Մարկ. 14.1. Ղուկ. 22. 1.

* Ասէ ցնա պետրոս. ոչ լուասցես 8
զոտս իմ յաւիտեան. պատասխանի ետ
նմա Յս. եթէ ոչ լուացից զքեզ՝ ոչ
ունիս ընդ իս մասն. * Ասէ ցնա սիմօն 9
պետրոս. Տր, մի՛ միայն զոտս իմ, այլ
և զձեռս՝ և զգլուխ. * Ասէ ցնա Յս. 10
լուացելոյն չէ՛ ինչ պիտոյ՝ բայց զի
զոտսն լուանայցէ. քանզի ամենևին
սուրբ է. և դուք սուրբ էք, այլ ոչ ամենեքին.



* Զի գիտէր զայն՝ որ մատնելոցն էր 11
զնա. վասն այնորիկ ասաց՝ եթէ ոչ
ամենեքին սուրբ էք. * Եւ յորժամ լուաց 12
զոտս նոցա, էառ զհանդերձս իւր՝ և
դարձեալ բազմեցաւ, և ասէ ցնոսա.
գիտէ՞ք զինչ արարի ձեզ. * Դուք 13
կոչէք զիս վարդապետ և Տր. և բար-
ւոք ասէք. քանզի եմ իսկ. * Իսկ արդ 14
եթէ ես լուացի զոտս ձեր, Տրս և վար-
դապետս, և դուք պարտիք զմիմեանց
զոտս լուանալ. * Զի օրինակ մի ետու 15
ես ձեզ, զի որպէս ես ձեզ արարի, և
դուք առնիջիք.

Ի.Օ. * ‖ Ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ է ծա- 16
ռայ մեծ քան զՏր իւր. և ոչ առաքեալ
‖ Մատ. մեծ քան զայն՝ որ առաքեացն զնա.
10.24. * Եթէ զայս գիտէք, երանելի եւս էք՝ 17
Ղուկ. եթէ առնիցէք զայս. * Ոչ վասն ամե- 18
6. 40. նեցուն ձեր ասեմ. զի ես գիտեմ, զորս
Վերը. ընտրեցի. այլ զի լցցի գիրն, թէ ‖ որ
15.20. ուտէր ընդ իս հաց՝ արար ինձ խաբէ-
‖ Սաղմ. ութի. * Յայսմհետէ իսկ ասեմ ձեզ 19
40. 10. մինչչև եղեալ. զի յորժամ լինիցի

ձէ.

20 հաւատասջիք՝ թէ ես եմ. * ‖ Ամէն ‖ Մատ.
ամէն ասեմ ձեզ. որ ընդունի, զորս 10.40.
ես առաքեցից՝ զիս ընդունի. և որ զիս Ղուկ.
ընդունի, ընդունի զայն, որ առա- 10. 16.
21 քեացն զիս. * Զայս իբրև ասաց Յս,
խռովեցաւ յոգի իւր՝ վկայեաց և ասէ.
‖ ամէն ամէն ասեմ ձեզ. զի միոն ՚ի ‖ Մատ.
22 ձէնջ մատնելոց է զիս. * Հայէին ընդ 26. 21.
միմեանս աշակերտքն տարակուսեալք, Մարկ.
23 թէ զումէ ասիցէ. * ‖ Եւ էր միոն 14. 18.
յաշակերտացն բազմեալ առ Յիս, զոր ‖ Վերը.
24 սիրէրն Յս. * Ակնարկէ նմա սիմօն 21. 20.
պետրոս՝ հարցանել՝ ո՞վ իցէ, վասն որոյ
25 ասէն. * Եւ նա անկեալ զլանջօքն
Յի, ասէ ցնա. Տր, ո՞վ է. պատասխա
26 նի ետ Յս և ասէ. * Այն է՝ որում ես
թացից զպատառն, և տաց. և թա-
ցեալ զպատառն տայ յուդայի իսկա-
27 րիովտացւոյ. * Եւ յետ պատառոյն ա-
պա եմուտ ՚ի նա սատանայ. և ասէ
ցնա Յս, արդ զոր ինչ առնելոց ես՝
28 արա՛ վաղվաղակի. * Եւ զայս ոչո՛ք
իմացաւ ՚ի բազմականացն, թէ
29 առ ինչ ասաց ցնա. * Զի ոմանք հա-
մարէին, թէ՝ զի զարկղն ունէր յու-
դա, ասաց նմա Յս, գնեա՛ զինչ՝ որ
պիտոյ է մեզ ՚ի տօնիս. և կամ թէ
30 աղքատաց ինչ տացէ. * Իսկ նորա առ-
եալ զպատառն՝ ել արտաքս վաղվա-
ղակի, և էր գիշեր.

Ի.Է.

31 * Եւ իբրև ել, ասէ Յս. այժմ փա-
ռաւորեցաւ Որդի մարդոյ. և Ած փա
32 ռաւորեցաւ ՚ի նմա. * Զի եթէ Ած
փառաւորեցաւ ՚ի նմա, և Ած փառաւ-
որեսցէ զնա յանձն իւր. և վաղվաղա
33 կի փառաւորեսցէ զնա. * Որդեակք
իմ՝ փոքր ինչ ժամանակ ընդ ձեզ եմ.
‖ խնդրիցէք զիս. և ո՛րպ ասացի ցհրէ- ‖ Վեր.
այսն, թէ ուր ես երթամ, դուք ոչ 7.34.
կարէք գալ. և արդ ձեզ ասեմ.
34 * ‖ Պատուիրան նոր տամ ձեզ. զի սի- ‖ Ղևտ.
րիցէք զմիմեանս, ո՛րպ սիրեցի ես զձեզ. 19. 18.
զի և դուք սիրեսջիք զմիմեանս. Մատ.
35 * Յայսմ գիտասցեն ամենեքեան, 22.39.
եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք Վերը.
36 զմիմեանս. * Ասէ ցնա սիմօն պետրոս. 15. 12.
Տր՝ յո՞ երթաս. պատասխանի ետ
Յս. ուր ես երթամ, դու ոչ կարես
այժմ գալ զկնի իմ, բայց յապայ ե-
37 կեսցես զկնի իմ. * Ասէ ցնա պետրոս.
Տր, ընդէ՞ր ոչ կարիցեմ գալ այժմ
զկնի քո. արդէն զանձն իմ իսկ եդից ‖ Մատ.
38 ՚ի վերայ քո. * Պատասխանի ետ Յս. 26. 34.
զա՞նձն քո դիցես ՚ի վերայ իմ. ‖ ամէն Մարկ.
ամէն ասեմ քեզ. չև իցէ հաւու խօ- 14. 30.
սեալ, մինչ դու երիցս ուրասցիս զիս. և 72.
Ղուկ. 22. 34. և 61.

## ԳԼ. ԺԴ.

1 Մի՛ խռովեսցին սիրտք ձեր: այլ հաւատացէք յԱ՟Ծ, և յիս հաւատացէք: 2 *Ի տան Հօր իմոյ օթեվանք բազում են: ապա թէ ոչ՝ ասացեալ էր իմ ձեզ. թէ երթամ, և պատրաստեմ ձեզ տեղի: 3 *Եւ եթէ երթամ, և պատրաստեմ ձեզ տեղի, դարձեալ գամ, և առնում զձեզ առ իս: զի ուր եսն իցեմ, և դուք ընդ իս իցէք: 4 *Եւ ուր երթամն գիտիցէք. և զճանապարհն գիտիցէք: 5 *Ասէ Թովմաս. Տր՟, ոչ գիտեմք, յո՞ երթաս. և զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել: 6 *Ասէ ցնա Յս՟. ես եմ ճանապարհ, և ճշմարտութիւն, և կեանք: ոչ ո՛ք գայ առ հայր՝ եթէ ոչ ինև: 7 *Եթէ զիս գիտէիք՝ ապա և զհայրն իմ գիտէիք: և այսուհետև գիտասջիք զնա. †: 8 *Ասէ ցնա Փիլիպպոս. Տր՟, ցո՛յց մեզ զհայր՝ և շատ է մեզ: 9 *Ասէ ցնա Յս՟. այսչափ ժամանակս ընդ ձեզ եմ, և ոչ ծանեար զիս Փիլիպպէ: որ ետեսն զիս, ետես զհայրն: և դու զիա՞րդ ասես՝ եթէ ցո՛յց մեզ զհայր: 10 *Ո՞չ հաւատաս, եթէ ես 'ի հայր, և հայր յիս է: զբանս, զորս ես խօսիմ ընդ ձեզ, ո՛չ եթէ յանձնէ ինչ խօսիմ. այլ հայրն, որ յիս բնակեալ է՝ նա գործէ զգործսն: 11 *Հաւատացի՛ք ինձ, եթէ ես 'ի հայր, և հայր յիս է: 12 *Ապա թէ ոչ՝ գոնէ վասն գործոցն հաւատացէ՛ք ինձ: ամէն ամէն ասեմ ձեզ. թէ որ հաւատայն յիս, զգործսն՝ զորս ես գործեմ, և նա գործեսցէ: և մեծամեծս ևս քան զնոյնս գործեսցէ: զի ես առ հայր երթամ: 13 *Եւ զորինչ խնդրիցէք յանուն իմ, արարից զայն: զի փառաւորեսցի հայր յՈրդի: 14 *Եթէ զորինչ խնդրիցէք յինէն՝ արարից զայն: 15 *Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք: 16 *Եւ ես աղաչեցից զհայր. և այլ մխիթարիչ տացէ ձեզ: զի ընդ ձեզ բնակեսցի 'ի յաւիտեան: 17 *Զհոգին ճշմարտութեան. զոր աշխարհս ոչ կարէ ընդունիլ: զի ոչ տեսանէ զնա. և ոչ ճանաչէ զնա: բայց դուք ճանաչէք զնա. զի առ ձեզ բնակեսցի՝ և ընդ ձեզ եղիցի: 18 *Ոչ թողից զձեզ որբս: գամ առ ձեզ: 19 *Փոքր մի ևս, և աշխարհս ոչ ևս տեսանէ զիս: բայց դուք տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ. և դուք կենդանի լինելոց էք: 20 *Յայնմ աւուր գիտասջիք դուք՝ զի ես 'ի Հօր իմում, և դուք յիս, և ես 'ի ձեզ: 21 *Որ ունի զպատուիրանս իմ, և պահէ զնոսա, նա՛ է որ սիրէ զիս: և որ սիրէն զիս, սիրեսցի 'ի Հօրէ իմմէ: և ես սիրեցից զնա. և երևեցուցից նմա զիս: 22 *Ասէ ցնա Յուդա ոչ Իսկարիովտացին. Տր՟, զի՞ եղև՝ զի մեզ յայտնելոց ես զքեզ՝ և ոչ աշխարհի: 23 *Պատասխանի ետ Յս՟ և ասէ ցնա: եթէ ոք սիրէ զիս՝ զբանն իմ պահեսցէ. և հայր իմ սիրեսցէ զնա: և առ նա եկեսցուք՝ և օթեվանս առ նմա արասցուք: 24 *Եւ որ ոչն սիրէ զիս՝ զբանն իմ ոչ պահէ: և բանն իմ, զոր լսէք՝ ոչ է իմ. այլ Հօրն, որ առաքեացն զիս: 25 *Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ ձեզս եմ: 26 *Իսկ մխիթարիչն Հոգին Սր՟բ՝ զոր առաքեսցէ հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամ. և յիշեցուսցէ զամենայն, զորինչ ասացի ձեզ: 27 *Զխաղաղութիւն թողում ձեզ: զխաղաղութիւն զիմ տամ ձեզ: ոչ որպէս աշխարհս տայ՝ տամ ես ձեզ: մի՛ խռովեսցին սիրտք ձեր. և մի՛ զանգիտեսցեն: 28 *Լուա՛յք, զի ասացի ես ձեզ՝ թէ երթամ, և գամ առ ձեզ: եթէ սիրէիք զիս՝ ապա ուրախ լեալ էր ձեր՝ թէ ես առ հայր երթամ. զի հայր իմ մեծ է քան զիս: 29 *Եւ այժմ ասացի ձեզ մինչչև եղեալ. զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք: 30 *Ոչ ևս այլ շատ խօսեցայց ընդ ձեզ: գայ իշխան աշխարհիս այսորիկ՝ և յիս ինչ ոչ գտանէ: 31 *Այլ զի ծանիցէ աշխարհ, եթէ սիրեմ զհայր: և որպէս պատուիրեաց ինձ հայր՝ այնպէս առնեմ: Յարի՛ք, գնասցուք աստի:

## ԳԼ. ԺԵ.

1 Ես եմ որթն ճշմարիտ. և հայր իմ մշակ է: 2 *Զամենայն ուռ՝ որ յիս է, և ոչ բերէ զպտուղ՝ կտրէ զնա. և զամ որ բերէ զպտուղ, սրբէ զնա, զի առաւել ևս պտղաբեր լիցի: 3 *Դուք արդէն իսկ սուրբ էք վասն բանին՝ 4 զոր խօսեցայ ընդ ձեզ: *Կացէք յիս՝ և ես 'ի ձեզ. որպէս ուռն ոչ կարէ զպտուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ ոչ իցէ հաստատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ոչ յիս հաստատեալ իցէք: 5 *Ես եմ որթ՝ և դուք ուռ. որ հաստատեալ է յիս՝ և ես 'ի նա, նա բերէ զպտուղ յոյժ. զի առանց իմ ոչինչ 6 կարէք առնել: *Եթէ ոք ոչ է հաստատեալ յիս, ել նա արտաքս իբրև զուռն՝ և ցամաքեցաւ. և ժողովեն զնա՝ և 'ի հուր արկանեն՝ և այրի: 7 *Եթէ կայցէք յիս, և բանք իմ 'ի ձեզ կայցեն՝ զորինչ կամիցիք, խնդ- 8 րեսջիք՝ և լինիցի ձեզ: *Յայսմիկ փառաւորեցաւ հայր իմ, զի պտուղ յոյժ բե-

բերիցէք . և եղիջիք իմ աշակերտք ։ 9 *Որպէս սիրեաց զիս Հայր, և ես սիրեցի զձեզ . հաստատուն կացէք 'ի սէր իմ ։ 10 *Եթէ պահիցէք զպատուիրանս իմ, կայջիք 'ի սէր իմ . որպէս և ես զպատուիրանս Հօր իմոյ պահեցի , և կամ 'ի սէր նորա ։ 11 *Զայս խօսեցայ ընդ ձեզ . զի ուրախութիւն իմ 'ի ձեզ իցէ . և ձեր ուրախութիւն լցեալ եղիցի ։ 12 *Այս է պատուէր իմ, զի սիրեսջիք զմիմեանս, որպ̃ և ես 'զձեզ սիրեցի ։ [Յոհ. 13.34.] 13 *Մեծ ևս քան զայս սէր ոչ ոք ունի եթէ զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկամաց իւրոց ։ [Եփես. 5. 2.] 14 *Դուք բարեկամք էք իմ . եթէ առնիցէք՝ զոր ես պատուիրեմ ձեզ ։ [1. Թես. 4. 9.] 15 *Ոչ ևս կոչեմ զձեզ ծառայս, զի ծառայն ոչ գիտէ զինչ գործէ տէրն նորա ։ այլ զձեզ կոչեցի բարեկամս , զի զամ̃ , զոր լուայ 'ի Հօրէ իմմէ՝ ծանուցի ձեզ ։ 16 *Ոչ եթէ դուք ընտրեցիք զիս . այլ ես ընտրեցի զձեզ, և եդի զձեզ . զի դուք երթայցէք՝ և պտղաբերք լինիցիք . և պտուղն ձեր կայցէ . և զոր ինչ խնդրիցէք 'ի Հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ ։ [Մտթ. 28.19.] 17 *Զայս պատուիրեմ , զի սիրեսջիք զմիմեանս ։ [1. Յոհ. 3.11. և 4. 7.] 18 *Եթէ աշխարհ զձեզ ատեայ . գիտասջիք զի նախ զիս ատեաց ։ 19 *Եթէ յաշխարհէ աստի էիք՝ աշխարհ զիւրն սիրէր արդեօք . բայց զի չէք յաշխարհէ , այլ ես ընտրեցի զձեզ յաշխարհէ , վ̃ն այնորիկ ատեայ զձեզ աշխարհ ։ 20 *Յիշեցէք զբանն՝ զոր ասացի ձեզ ։ եթէ ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր ։ եթէ զիս հալածեցին . ապա և զձեզ հալածեսցեն . եթէ զբանն իմ պահեցին , ապա և զձերն պահեսցեն ։ [Յոհ. 13.16. Մտթ. 10.24.] 21 *Այլ զնոյնս արասցեն ընդ ձեզ վասն անուան իմոյ . զի ոչ գիտեն զայն՝ որ առաքեացն զիս ։ [Մտթ. 24. 9.] 22 *Իմ եթէ չէր եկեալ և խօսեցեալ ընդ նոսա, մեղ ինչ ոչ գոյր նոցա . բայց արդ չիք պատճառ վասն մեղաց իւրեանց ։ 23 *Որ զիս ատեայ՝ և զՀայրն իմ ատեայ ։ 24 *Եթէ զգործսն չէր գործեալ 'ի նոսա՝ զոր ոչ այլ ոք գործեաց , մեղ ինչ ոչ գոյր նոցա . բայց արդ տեսին, և ատեցին . և զիս և զՀայր իմ ։ 25 *Այլ զի լցցի բանն, որ յօրէնս նոցա գրեալ է . թէ ատեցին զիս տարապարտուց ։ [Սաղմ. 24.19.] 26 *Այլ յորժամ եկեսցէ մխիթարիչն՝ զոր ես առաքեցից ձեզ 'ի Հօրէ՝ զՀոգին ճշմարտութե̃ որ 'ի Հօրէ ելանէ , նա վկայեսցէ վասն իմ ։ [Ղուկ. 24. 49.] 27 *Եւ դուք վկայէք՝ զի 'ի սկզբանէ ընդ իս էք ։

Գլ. ԺԶ.

1 Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի գայթագղեսջիք ։ 2 *'Ի ժողովրդոց իւրեանց հանիցեն զձեզ . այլ եկեսցէ ժամանակ՝ զի ամենայն որ սպանանիցէ զձեզ՝ համարիցի պաշտօն մատուցանել Ա̃յ ։ 3 *Եւ զայն արասցեն ընդ ձեզ . քանզի ոչ ծանեան զՀայր՝ և ոչ զիս ։ 4 *Այլ և զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի յորժամ եկեսցէ ժամանակ՝ յիշիցէք՝ թէ ես ասացի ձեզ ։ 5 *Զայս 'ի սկզբանէ ոչ ասացի ձեզ . քանզի ընդ ձեզ էի . բայց արդ երթամ ես առ առաքիչն իմ ։ և ոչ ոք 'ի ձէնջ հարցանիցէ զիս . թէ յո՞ երթաս ։ 6 *Այլ զի զայս խօսեցայ ընդ ձեզ . 7 տրտմութիւն ելից զսիրտս ձեր ։ *Այլ ես զճշմարիտն ասեմ ձեզ . լաւ է ձեզ եթէ ես երթամ . զի եթէ ես ոչ երթայց՝ մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ . ապա եթէ երթամ, առաքեցից 8 զնա առ ձեզ ։ *Եւ նա եկեալ յանդիմանեսցէ զաշխարհ՝ վասն մեղաց՝ և վ̃ն արդարութե̃՝ և վ̃ն դատաստանի ։ 9 *Վասն մեղաց՝ զի ոչ հաւատան յիս ։ 10 *Վասն արդարութե̃՝ զի առ Հայր իմ երթամ . և ոչ ևս տեսանէք զիս ։ 11 *Վ̃ն դատաստանի՝ զի իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է ։ 12 *Եւս բազում ինչ ունիմ ասել ձեզ՝ այլ ոչ կարէք հանդարտել այժմիկ ։ 13 *Յորժամ եկեսցէ նա Հոգին ճշմարտութե̃՝ առաջնորդեսցէ ձեզ ամ̃ ճշմարտութ̃ . զի ոչ եթէ յանձնէ ինչ խօսիցի . այլ զոր լուիցէ՝ խօսիցի . և 14 զգալոցն պատմեսցէ ձեզ ։ *Նա զիս փառաւորեսցէ , զի յիմմէ անտի առ 15 նուցու և պատմեսցէ ձեզ ։ *Զամ̃ ինչ զոր ունի Հայր՝ իմ է ։ վասն այնորիկ ասացի ձեզ . թէ յիմմէ անտի առ 16 նուցու և պատմեսցէ ձեզ ։ *Փոքր մի, և ոչ ևս տեսանէք զիս , և ապա սակաւիկ մի , և տեսանիցէք զիս . և զի ես 17 երթամ առ Հայր ։ *Ասէին ոմանք յաշակերտաց անտի ցմիմեանս . զի՞նչ է այս՝ զոր ասէ ցմեզ . թէ փոքր մի , և ոչ տեսանէք զիս . և դարձեալ սակաւիկ մի , և տեսանիցէք զիս . և թէ 18 ես առ Հայր երթամ ։ *Եւ ասէին , զի՞նչ իցէ այն փոքր միս և ոչ գիտեմք 19 զինչ խօսի ։ *Գիտաց Յ̃ս եթէ կամէին զնա հարցանել . և ասէ ցնոսա . վասն այդորիկ խնդրէք ընդ միմեանս՝ զի ասացի թէ փոքր մի , և ոչ տեսանէք զիս, և դարձեալ սակաւիկ միւսևս, 20 և տեսանիցէք զիս ։ *Ամէն ամէն ասեմ ձեզ . զի լայջիք , և ողբասջիք դուք՝ և

աշխարհ խնդասցէ. դուք տրտմեսջիք՝
այլ տրտմութիւն ձեր յուրախութիւն
եղիցի: *Կին յորժամ ծնանիցի՝ տրտ 21
մութիւն է նմա, զի հասեալ է ժամ նո̃.
այլ յորժամ ծնցի զմանուկն, ոչ եւս
յիշէ զնեղութի̃ն վասն խնդութեան.
զի ծնաւ մարդ յաշխարհ: *Եւ դուք 22
այժմ տրտմութի̃ ունիք. այլ դար-
ձեալ տեսից զձեզ՝ եւ ուրախ լիցին
սիրտք ձեր. եւ զուրախութի̃ն ձեր՝ ոչ
ոք հանիցէ ՚ի ձէնջ: *Եւ յայնմ աւուր 23
‖Յակ. 1. 5. զիս ինչ ոչ հարցանիցէք. ‖ամէն ամէն
ասեմ ձեզ՝ զի զորինչ խնդրիցէք ՚ի
Մէր. հօրէ իմմէ յանուն իմ, տացէ ձեզ:
14.13. *Մինչեւ ցայժմ ոչինչ խնդրեցիք յա- 24
Մատ. 7. 7. նուն իմ. խնդրեցէք, եւ առնուցուք.
զի ուրախութի̃ն ձեր լցեալ իցէ:
21.22. *Զայս առակօք խօսեցայ ընդ ձեզ. 25
Մրկ. եկեսցէ ժամանակ՝ յորժամ ոչ եւս ա-
11. 24. ռակօք խօսեցայց ընդ ձեզ. այլ յայտ
Ղուկ. նապէս զհօրէ պատմեցից ձեզ:
11. 9. *Յայնմ աւուր խնդրեսջիք յանուն 26
իմ. եւ ոչ ասեմ ձեզ՝ եթէ ես աղաչե
ցից զհայր վասն ձեր: *Զի ինքն իսկ 27
հայր սիրէ զձեզ՝ զի դուք զիս սիրե-
ցիք. եւ հաւատացիք, թէ ես յԱծ̃ ելի:
*Ելի ՚ի հօրէ՝ եւ եկի յաշխարհ. դար- 28
ձեալ թողում զաշխարհ, եւ երթամ
առ հայր: *Ասեն ցնա աշակերտքն՝ 29
ահա արդ յայտնութբ̃ խօսիս, եւ առակ
եւ ոչ մի ինչ ասես: *Արդ գիտեմք՝ 30
եթէ գիտես զա̃մ. եւ ոչինչ պիտոյ է
եթէ ոք հարցանիցէ զքեզ. յայսմիկ
հաւատամք՝ եթէ յԱծ̃ ելեր:
*Պատասխանի ետ նոցա Յս̃ եւ ասէ. 31
‖Մատ. այժմ հաւատայք: *‖Ահա եկեսցէ 32
26. 31. ժամ, եւ եկեալ իսկ է. զի ցրուեսջիք
Մրկ. յիւրաքանչիւր տեղիս. եւ զիս միայն
14. 27. թողուցուք. եւ չեմ միայն, զի հայր ընդ
իս է: *Զայս խօսեցայ ընդ ձեզ. զի 33
ընդ իս զխաղաղութի̃ ունիցիք. յաշ-
խարհի աստ զնեղութի̃ ունիցիք. այլ
քաջալերեցարուք. զի ես յաղթեցի
աշխարհի:

## ԳԼ: ԺԷ:

Զայս իբրեւ խօսեցաւ Յս̃, համ- 1
բարձ զաչս իւր յերկինս եւ ասէ.
հայր՝ հասեալ է ժամ, փառաւորեա
զՈրդի քո. զի եւ Որդի քո փառաւո-
‖Մատ. րեսցէ զքեզ: *‖Որպ̃ ետուր նմա իշխա 2
28.18. նութի̃ ամենայն մարմնոյ. զի ա̃մ, զոր
ետուր նմա, տացէ զկեանսն յաւիտե
նականս: *Այս են յաւիտենական 3
կեանք. զի ծանիցեն զքեզ միայն ճշմա
րիտ Ած̃. եւ զոր առաքեցեր զՅս̃ Քս̃:
*Ես զքեզ փառաւորեցի յերկրի. 4
զգործն կատարեցի, զորս ետուր ցիս՝

5 զի արարից: *Եւ այժմ փառաւորեա
զիս հայր, առ ՚ի քէն փառօքն՝ զոր ու-
նէի յառաջ քան զլինել աշխարհի առ
6 ՚ի քէն: *Յայտնեցի զանուն քո մարդ-
կան, զորս ետուր ինձ յաշխարհէ. քո
էին, եւ ինձ ետուր զնոսա. եւ զբանն քո
7 պահեցին: *Արդ գիտացին, եթէ
զա̃մ ինչ՝ զոր ետուր ինձ, առ ՚ի քէն
8 են: *Զի զբանն՝ զոր ետուր ինձ՝ ետու
նոցա. եւ նոքա ընկալան, եւ ծանեան
ճշմարտութբ̃՝ թէ առ ՚ի քէն ելի. եւ
հաւատացին եթէ դու առաքեցեր
9 զիս: *Արդ՝ ես վասն նց̃ աղաչեմ, եւ
ոչ վասն աշխարհի աղաչեմ. այլ վասն
նոցա՝ զորս ետուրն ինձ՝ զի քո են:
10 *Եւ որինչ իմ է՝ ա̃մ քո է. եւ որինչ
քո է՝ այն իմ է. եւ փառաւորեալ եմ
11 ՚ի նոսա: *Եւ ես ոչ եւս եմ յաշխար-
հի՝ եւ նոքա յաշխարհի են. եւ ես առ
քեզ գամ: հայր սբ̃, պահեա զնոսա
յանուն քո, որով ետուրն ինձ. զի
եղիցին մի, որպէս եւ մեք մի եմք:
12 *Մինչ էի յաշխարհի ընդ նոսա, ես
պահէի զն̃ յանուն քո՝ ‖որով ետուրն ‖Մատ.
ինձ՝ եւ պահեցի. եւ ոչ ոք ՚ի նոցանէ կո 18. 9.
րեաւ՝ բայց որդին կորստեան. ‖զի ‖Սաղ.
13 գիրն լցցի: *Նայց արդ առ քեզ գամ. 108. 8.
եւ զայս խօսիմ յաշխարհի. զի ունիցին
զուրախութի̃ իմ լիով յանձինս իւրե̃:
14 *Ես ետու նց̃ զբանն քո. եւ աշխարհ
ատեաց զնոսա. զի չեն յաշխարհէ, որպ̃
15 եւ ես չեմ յաշխարհէ: *Ոչ զայս աղա
չեմ, զի բարձցես զնոսա յաշխարհէ.
այլ զի պահեսցես զնոսա ՚ի չարէ:
16 *Յաշխարհէ աստի չեն, որպէս եւ ես
17 չեմ յաշխարհէ: *Սուրբ արա զնոսա
ճշմարտութբ̃ քով. զի քո բանդ ճշշ
18 մարտութի̃ է: *Որպէս զիս առաքե-
ցեր յաշխարհ. եւ ես առաքեցի զնոսա
19 յաշխարհ: *Եւ ՚ի վերայ նոցա ես
սուրբ առնեմ զանձն իմ. զի եղիցին
եւ նոքա սրբեալք ճշմարտութբ̃:
20 *Այլ ոչ վասն նոցա միայն աղաչեմ,
այլ եւ վասն ա̃մ հաւատացելոց բանիւն
21 նոցա յիս: *Զի ամենեքին մի իցեն.
որպ̃ դու հայր յիս՝ եւ ես ՚ի քեզ. զի եւ
նոքա ՚ի մեզ իցեն. զի եւ աշխարհ հա-
ւատասցէ եթէ դու առաքեցեր զիս:
22 *Եւ ես զփառսն, զորս ետուր ինձ,
ետու նոցա. զի իցեն մի, որպէս եւ մեք
23 մի եմք: *Ես ՚ի նոսա՝ եւ դու յիս. զի
եղիցին կատարեալք ՚ի մի. եւ գիտաս-
ցէ աշխարհ, եթէ դու առաքեցեր զիս.
եւ սիրեցի զնոսա՝ որպ̃ դու զիս սիրեցեր
24 *Հայր՝ զորս ետուրն ինձ, կամիմ, զի
ուր ես եմ, եւ նոքա իցեն ընդ իս. զի
տեսանիցեն զփառսն իմ. զորս ետուրն
ցիս. զի սիրեցեր զիս յառաջ քան զլի-
նել

նիլ աշխարհի։ 25 *Հայր արդար, և աշխարհս զքեզ ոչ ծանեաւ. այլ ես զքեզ ծանեայ՝ և նոքա ծանեան՝ եթէ դու առաքեցեր զիս։ 26 *Եւ ծանուցի զանուն քո. և ծանուցից. զի սէրն, զոր սիրեցեր զիս՝ 'ի նոսա իցէ և ես 'ի նոսա։

[որով սիրեցեր]

## ԳԼ: ԺԸ:

1 Զայս իբրև ասաց Յս, ել աշակերտօքն հանդերձ յայնկոյս ձորոյն կեդրոնի. ուր էր պարտէզ, յոր եմուտ ինքն և աշակերտքն իւր։ 2 *Գիտէր և յուդա, որ զնա մատնելոց էր զտեղին. զի բազում անգամ ժողովեալ էր անդր Յս աշակերտօքն հանդերձ։ 3 *Եւ յուդայի առեալ ընդ իւր զգունդն, և 'ի քահանայապետից և 'ի փարիսեցւոյն սպասաւորս, գայ անդր ջահիւք՝ և ղամպարօք՝ և զինուք։ 4 *Իսկ Յս իբրև ետես զայն ամեն եկեալ 'ի վր նր, ել և ասէ ցնս։ զո՞ խնդրէք։ 5 *Պատասխանի ետուն նմա. զՅս նազովրեցի։ ասէ ցնս Յս. ես եմ։ կայր ընդ նոսա և յուդա՝ որ մատնէրն զնա։ 6 *Իբրև ասաց՝ թէ ես եմ, յետս յետս չոգան՝ և զարկան զգետնի։ 7 *Դարձեալ եհարց զնոսա։ զո՞ խնդրէք։ Նոքա ասեն, զՅս նազովրեցի։ 8 *Պատասխանի ետ նց Յս. ասացի ձեզ թէ ես եմ։ արդ՝ եթէ զիս խնդրէք՝ թո՛յլ տուք դոցա երթալ։ 9 *Զի լցցի բանն՝ զոր ասաց. թէ զոր՝ ետուր ցիս՝ ոչ կորուսի 'ի նոցանէ՝ և ոչ զոք։ 10 *Իսկ սիմոն պետրոս քանզի ունէր սուր, ձգեաց զնա. և եհար զքահանայապետին ծառայ՝ և 'ի բաց եհատ զունկն նր զաջոյ։ և էր անուն ծառային մաղքոս։ 11 *Ասէ Յս ցպետրոս. արկ զսուրդ անդրէն 'ի պատեան իւր։ զբաժակն, զոր ետ ինձ Հայր՝ ո՞չ ըմպիցեմ զնա։ 12 *Իսկ գունդն, և հազարապետն, և սպասաւորքն հրէից կալան զՅս՝ և կապեցին։ 13 *Եւ ածին զնա նախ առ աննա՝ որ էր աներ կայիափայի. որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ։ 14 *Եւ այն կայիափայ էր՝ որ խրատ ետ հրէից, եթէ լաւ է առն միում մեռանիլ 'ի վերայ ժողովրդեանն։ 15 *Եւ երթային զհետ նր սիմոն պետրոս՝ և միւս աշակերտն։ և աշակերտն այն՝ քանզի ծանօթ էր քահանայապետին՝ եմուտ ընդ Յս 'ի գաւիթ քահանայապետին։ 16 *Եւ պետրոս կայր առ դրանն արտաքոյ։ ել միւս աշակերտն՝ որ էր ծանօթ քահանայապետին՝ և ասաց ցդռնապանն՝ և եմոյծ 'ի ներքս զպետրոս։ 17 *Ասէ աղջիկն՝ որ դռնապանն էր, ցպետրոս. միթէ և դո՞ւ յաշակերտաց առնն այնորիկ իցես։ և նա ասէ՝ ոչ եմ։ 18 *Կային անդ ծառայքն և սպասաւորք խարոյկ արկեալ՝ քանզի ցուրտ էր՝ և ջեռնուին։ կայր ընդ նս և պետրոս՝ և ջեռնոյր։ 19 *Եւ քահանայապետն եհարց զՅս վասն աշակերտացն՝ և վն վարդապետութե նորա։ 20 *Պատասխանի ետ նմա Յս։ ես յայտնապէս խօսեցայ յաշխարհի. ես յամ ժամ ուսուցի 'ի ժողովրդեանն. և 'ի տաճարի անդ՝ ուր ամ հրէայքն ժողովեալ էին։ և 'ի ծածուկ ինչ ոչ խօսեցայ։ 21 *Զի՞ հարցանես զիս հարց զայնոսիկ՝ որք լուա՛ն, եթէ զինչ ասացի ցնոսա. ահաւանիկ նոքա գիտեն զինչ ասացի ես։ 22 *Իբրև նա զայս ասաց, միոմն 'ի սպասաւորացն՝ որ անդ կայր, եած ապտակ Յի և ասէ։ այդպէս պատասխանի տաս քահանայապետիդ։ 23 *Եւ Յս ասէ ցնա։ եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա՛ վն չարին։ իսկ եթէ բարի, ընդէ՞ր հարկանես զիս։ 24 *Եւ առաքեաց զնա աննա կապեալ առ կայիափայ քահանայապետ։ 25 *Եւ սիմոն պետրոս կայր անդ՝ և ջեռնոյր։ ասեն ցնա, մի՞թէ և դու յաշակերտաց անտի նր իցես։ նա ուրացաւ և ասէ՝ թէ չեմ։ 26 *Եւ ասէ միոմն 'ի ծառայից քահանայապետին՝ ազգական այնորիկ, զորոյ զունկն եհատ պետրոս։ ո՞չ ես իսկ տեսի զքեզ 'ի պարտիզի անդ ընդ նմա։ 27 *Դարձեալ ուրացաւ պետրոս։ և վաղվաղակի հաւ խօսեցաւ։ 28 *Եւ ածեն զՅս 'ի վանաց կայիափայ յապարանս դատաւորին։ և էր այգուց։ և նոքա ոչ մտին յապարանսն, զի մի պղծեսցին, այլ զի ուտիցեն զզատիկն։ 29 *Ել առ նոսա պիղատոս արտաքս՝ և ասէ։ զի՞նչ չարախօսութի մատուցանէք զառնէն զայնմանէ։ 30 *Պատասխանի ետուն և ասեն ցնա։ եթէ չէր չարագործ այրն այն, ապա ոչ մատնէաք զնա քեզ։ 31 *Ասէ ցնոսա պիղատոս։ առէք զնա դուք. և ըստ ձերոց օրինացն դատեցէք։ ասեն ցնա հրէայքն։ մեզ ոչ է արժան սպանանել զոք։ 32 *Զի լցցի բանն Յի, զոր ասաց. նշանակեալ՝ թէ որով մահու մեռանելոց իցէ։ 33 *Եմուտ միւսանգամ յապարանսն պիղատոս. կոչեաց զՅս՝ և ասէ ցնա։ դո՞ւ ես թագաւորն հրէից։ 34 *Պատասխանի ետ Յս։ 'ի քէ՞ն ասես զայդ՝ եթէ այլք ասացին քեզ զինէն։ 35 *Պատասխանի ետ պիղատոս։ միթէ և ես հրեա՞յ իցեմ։ ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ։ զի՞նչ գործ գործեալ է քո։ 36 *Պատասխանի ետ Յս. իմ արքայութի չէ յայսմ աշխարհէ։

[Բ Թագ. 15.23. Մատթ. 26.36. Մարկ. 14.32. Ղուկ. 22.39. Մատթ. 26.47. Մարկ. 14.43. Ղուկ. 22.47. Յովհ. 17.12. Ղուկ. 3.2. Յովհ. 11.49. Մատթ. 26.58. Մարկ. 14.54. Ղուկ. 22.54. Մատթ. 26.57. Մարկ. 14.53. Ղուկ. 22.54. Մատթ. 26.69. Մարկ. 14.67. Ղուկ. 22.56. Մատթ. 27.2. Մարկ. 15.1. Գործ. 10.28. և 11.3. Մատթ. 20.19. Մատթ. 27.11. Մարկ. 15.2. Ղուկ. 23.3.]

խարհէ․ եթէ յաշխարհէ աստի էր ար-
քայութիւն իմ, սպասաւորքն իմ մարտն-
չէին արդեօք՝ զի մի՛ մատնեցայց հրէից․
բայց արդ թագաւորութիւն իմ չէ՛ աս-
տի։ *Ասէ ցնա պիղատոս․ ապաթէ 37
այդպէս իցէ, թագաւոր ո՞ն ես դու։
պատասխանի ետ Յս՟․ դու ասես՝ թէ
թագաւոր իցեմ․ բայց ես յայդ իսկ
ծնեալ եմ։ և ՚ի դոյն իսկ եկեալ եմ
յաշխարհ, զի վկայեցից ճշմարտու-
թեա՟ն․ ամ՟ որ ՚ի ճշմարտութենէ է՝ լսէ
բարբառոյ իմոյ։ *Ասէ ցնա պիղա- 38
տոս․ զի՞նչ է ճշմարտութի՟։ զայս իբ-
րև ասաց, դարձեալ ել առ հրէայսն՝
և ասէ ցնոսա․ ես՝ և ոչ մի ինչ պատ-
ճառս գտանեմ ՚ի նմա։ *‖Բայց է ձեր 39
սովորութիւն, զի զմի ոք արձակեցից
ձեզ ՚ի զատկիս․ արդ՝ կամի՞ք՝ զի արձա-
կեցից ձեզ զթագաւորն հրէից։
*Աղաղակեցին ամենեքեան՝ և աս- 40
ցին․ մի՛ զդա, այլ զբարաբբայ․ և էր
բարաբբայն այն աւազակ։

‖ Մատ. 27.15. Մարկ. 15. 6. Ղուկ. 23. 17.

## ԳԼ․ ԺԹ․

Յայնժամ ‖ էառ պիղատոս զՅս՟ 1
և գան եհար։ *Եւ զինուորացն 2

‖ Մատ. 27. 27.



Մարկ. 15. 16.

արարեալ պսակ ՚ի փշոց՝ եդին ՚ի
գլուխ նո՟ր․ և զգեցուցին նմա զհան-
դերձ ծիրանի։ *Եւ գային առ նա, և 3
ասէին․ ողջ եր արքայ հրէից․ և հա-
նէին նմա ապտակս։ *Եւ դարձեալ 4
պիղատոս արտաքս՝ և ասէ ցնո՟․ ահա
ածեմ զնա արտաքս առ ձեզ․ զի գի-
տասջիք թէ ես վնաս ինչ ՚ի նմա ոչ
5 գտանեմ։ *(Ել Յս՟ արտաքս․ և ու-
նէր պսակ ՚ի փշոց և զհանդերձ ծիրա-
նի։) և ասէ ցնո՟․ ահա՛ այրդ ցձեզ։
6 *Իբրև տեսին զնա քահանայապետքն
և սպասաւորք, զաղաղակ բարձին՝ և
ասեն․ ՚ի խա՛չ հան․ ՚ի խա՛չ հան զդա։
ասէ ցնոսա պիղատոս․ առէք զդա ՚ի
ձեզ․ և ձեզէ՛ն հանէք ՚ի խաչ․ զի ես
՚ի դմա վնաս ինչ ոչ գտանեմ։
7 *Պատասխանի ետուն նմա հրէայքն․
մեք օրէնս ունիմք․ և ըստ օրինաց մե-
րոյ պարտի մեռանիլ․ զի զանձն իւր
8 Որդի այ՟ արար։ *Իբրև լուաւ զբանս
զայս պիղատոս, առաւել ևս երկեաւ։
9 *Եմուտ դարձեալ անդրէն յապա-
րանսն, և ասէ ցՅս՟․ ուստի՞ ես դու։
և Յս՟ ոչ ետ նմա պատասխանի։
10 *Ասէ ցնա պիղատոս․ ընդ իս ո՞չ խօ-
սիս․ ո՞չ գիտես եթէ իշխանութի՟ ու-
նիմ հանել զքեզ ՚ի խաչ․ և իշխանու-
11 թի՟ ունիմ արձակել զքեզ։ *Պատաս-
խանի ետ Յս՟․ ոչ ունէիր դու իշխա-
նութի՟ ՚ի վերայ իմ, և ոչ մի․ եթէ ոչ
էր տուեալ քեզ ՚ի վերուստ․ վասն այ-
սորիկ որ մատնեացն զիս քեզ, նո՟ր մեծ
12 մեղք են։ *Եւ յայնմանէ պիղատոս
խնդրէր արձակել զնա․ և հրէայքն
աղաղակէին, և ասէին․ եթէ զդա ար-
ձակես՝ չե՛ս բարեկամ կայսեր․ ամ՟ ոք
որ թագաւոր կոչէ զանձն իւր, հակա-
13 ռակ է կայսեր։ *Իսկ պիղատոս իբրև
լուաւ զբանս զայս, եհան զՅս՟ ար-
տաքս․ և նստաւ ՚ի վե՟ր բեմին, ՚ի տեղ-
ւոջն որ կոչիւր քարայատակ․ և եբրայե-
14 ցերէն կապպաթա։ *Էր ուրբաթն
զատկի․ և էր ժամ իբրև վեցերորդ․
և ասէ ցհրէայսն․ ահա՛ թագաւոր ձեր
15 ցձեզ։ *Եւ նոքա աղաղակէին, բա՛րձ
՚ի մէնջ․ բա՛րձ ՚ի մէնջ՝ և հա՛ն զդա ՚ի
խաչ․ ասէ ցնոսա պիղատոս․ ես զթա-
գաւորդ ձեր ՚ի խա՞չ հանիցեմ․ պատաս-
խանի ետուն քահանայապետքն․ չի՛ք
մեր թագաւոր բաց ՚ի կայսերէ։
16 *Յայնժամ ետ զնա ՚ի ձեռս նո՟ց, զի ՚ի
17 խաչ ելանիցէ։ *‖Եւ նոքա առեալ
տանէին զնա․ և բարձեալ էր ինքնին
զխաչափայտն․ և ելանէր ՚ի տեղին՝ որ
անուանեալ էր գագաթն․ և կոչիւր
եբրայեցերէն գողգոթա։
18 *Ուր և ՚ի խաչ իսկ հանին զնա․ և ընդ
նմա երկուս ևս այլս աստի և անտի, և
19 ՚ի միջի զՅս՟։ *Գրեաց և տախտակ մի
պիղատոս, և եդ ՚ի վերայ խաչին․ և
էր գրեալ Յս՟ նազովրեցի, թագաւոր
20 հրէից։ *Զայն տախտակ ընթերցան
բազումք ՚ի հրէից․ զի մօտ էր ՚ի քա-
ղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յս՟։
և

‖ Մատ. 27.33. Մարկ. 15.22. Ղուկ. 23. 33.

և էր գրեալ Եբրայեցերէն, Դաղմատերէն. և Յունարէն։ 21 *Ասեն ցպիղատոս քահանայապետքն հրէից. մի՛ գրեր թագաւոր հրէից. այլ թէ նա ասաց՝ թագաւոր եմ հրէից։

22 *Պատասխանի ետ պիղատոս. զոր ինչ գրեցի՝ գրեցի։ 23 *Իսկ զինուորքն իբրև հանին 'ի խաչ զՅս, ‖ առին զհանդերձս նր. (և արարին չորս մասունս. իւրաքանչիւր զինուորի մասն։) Իսկ զպատմուճանն՝ քանզի էր առանց կարանի, 'ի վերուստ փորանկեալ ամենևին։ 24 *Ասեն ցմիմեանս. մի՛ պատառեսցուք զայդ. այլ արկցուք վիճակս 'ի վերայ դորա՝ ում և ելցէ. զի լցցի գիրն՝ որ ասէ. ‖ Բաժանեցին զհանդերձս իմ յիւրեանս, և 'ի վերայ պատմուճանի իմոյ զվիճակ արկին։ զինուորքն զայս ինչ գործեցին։

(‖ Մատ. 27. 35. Մարկ. 15.24. Ղուկ. 23. 34. ‖ Սաղմ. 21. 19.)

25 *Եւ կային առ խաչին Յի մայր նր. և քոյր մօր նր մարիամ կղէօպայ. և մարիամ մագդաղենացի։ 26 *Յս իբրև ետես զմայրն, և զաշակերտն, զոր սիրէր, զի կայր մօտ. ասէ ցմայրն, Կին դու, ահա՛ որդի քո։ 27 *Ապա ասէ ցաշակերտն. ահա՛ մայր քո. և յայնմ ժամանակէ էառ աշակերտն զնա առ իւր։

28 *Յետ այսորիկ գիտաց Յս, եթէ ահա ամ ինչ կատարեալ է. ‖ զի կատարեսցի գիրն, ասէ. ծարաւի եմ։ 29 *Եւ անդ կայր աման ինչ լի քացախով. և նք սպունգ լցեալ քացախով ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտկաւ զոպայի՝ մատուցին 'ի բերան նր։ 30 *Իբրև էառ Յս զքացախն հանդերձ լեղւովն՝ ասէ. ամ ինչ կատարեալ է. և խոնարհեցուցեալ զգլուխն՝ աւանդեաց զոգին։

(‖ Սաղմ. 68.22.)

31 *Իսկ հրէայքն (քանզի ուրբաթ էր,) զի մի՛ մնասցեն 'ի խաչին ագանիցին մարմինքն մինչև ցշաբաթն, (զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ։) աղաչեցին զպիղատոս, զի խորտակեսցեն զբարձս նց, և բարձցին։ 32 *Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս. նոյնպէս և զմիւսոյն՝ որ ընդ նմա 'ի խաչին ելեալ էր։ 33 *Բայց իբրև եկին առ Յս, և տեսին զի այն ինչ մեռեալ էր՝ ոչ խորտակեցին զբարձս նորա։

34 *Այլ մի ոմն 'ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նր. և վաղվաղակի ել արիւն, և ջուր։ 35 *Եւ որ ետեսն, վկայեաց. և ճշմարիտ է վկայութի նր. և նա գիտէ եթէ ճշմարիտ ասէ. զի և դուք հաւատասջիք։ 36 *Այս եղև՝ զի լցցի գիրն, եթէ ‖ ոսկր նր մի՛ փշրեսցի։ 37 *Եւ դարձեալ միւս գիր ասէ, եթէ ‖ հայեսցին 'ի նա՝ յոր խոցեցինն։

(‖ Ելից. 12.46. Թուոց. 9. 12. ‖ Զաքա. 12.10.)

38 *‖Յետ այսորիկ աղաչեաց զպիղատոս յովսէփ, որ յարիմաթեայ էր աշակերտ Յի 'ի ծածուկ՝ վասն ահին հրէից. զի բարձցէ զմարմինն Յի. և հրամայեաց պիղատոս. եկն և եբարձ զնա։ 39 *Եկն և նիկոդեմոս՝ ‖ որ եկեալն էր առ Յս 'ի գիշերի զառաջինն, և եբեր

(‖ Մատթ. 27.57. Մարկ. 15.43. Ղուկ. 23. 50. ‖ Վեր. 3. 2.)






զմուռս խառն ընդ հալուէս, իբրև լտերս հարիւր: 40 *Առին զմարմինն Յի, և պատեցին կտաւօք և խնկօք հանդերձ. որպէս օրէն էր հրէից պատել: 41 *Եւ էր 'ի տեղւոջն՝ յորում խաչեցաւ՝ պարտէզ: և 'ի պարտիզի անդ գերեզման նոր. յորում ոչոք երբեք էր եդեալ: 42 *Անդ վն ուրբաթուն հրէից՝ զի մօտ էր գերեզմանն՝ եդին զՅս:



## Գլ: Ի.

Մատթ. 28.1. Մարկ. 16.1. Ղուկ. 24.1.

1 Եւ ‖ 'ի միաշաբաթուջն մարիամ մագդաղենացի գայ առաւօտուն ընդ արշալուսն 'ի գերեզման անդր. և տեսանէ զվէմն բարձեալ 'ի դրանց գերեզմանին: 2 *Ապա ընթանայ՝ և գայ առ սիմօն պետրոս. և առ միւս աշակերտն. զոր սիրէրն Յս. և ասէ ցնս: բարձին զՏր 'ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմ, ուր եդին զնա: 3 *Ել պետրոս և միւս աշակերտն, և գային 'ի գերեզմանն: 4 *Ընթանային երկոքեան 'ի միասին: և միւս աշակերտն յառաջեաց, ընթացաւ վաղվաղոյն քան զպետրոս՝ և եկն նախ 'ի գերեզմանն: 5 *Եւ խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն. բայց 'ի ներքս ոչ եմուտ: 6 *Եկն և սիմօն պետրոս՝ որ գայրն զկնի նր. և եմուտ 'ի գերեզմանն: և տեսանէ զկտաւսն, զի կային անդ: 7 *Եւ վարշամակն, որ էր 'ի գլուխ նորա՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր. այլ ուրոյն ծալեալ 'ի մի կողմն: 8 *Յայնժամ եմուտ և միւս աշակերտն. որ եկեալն էր յառաջագոյն 'ի գերեզմանն՝ ետես և հաւատաց: 9 *Զի չև ևս գիտէին զգիրս՝ թէ պարտ է նմա 'ի մեռելոց յառնել: 10 *Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն:

Մատթ. 28. 1. Մարկ. 16. 5. Ղուկ. 24. 4.

11 *‖ Բայց մարիամ կայր արտաքոյ գերեզմանին, և լայր: և մինչ դեռ լայր՝ խոնարհեցաւ 'ի գերեզմանն: 12 *Եւ տեսանէ երկուս հրեշտակս 'ի սպիտակս. զի նստէին մի 'ի սնարից՝ և մի յանոտից՝ ուր կայր մարմինն Յի: 13 *Եւ նոքա ասեն ցնա: կին դու՝ զի՞ լաս: ասէ ցնս. զի բարձին զՏրն իմ 'ի գերեզմանէ աստի. և ոչ գիտեմ, ուր եդին զնա: 14 *Զայս իբրև ասաց. դարձաւ 'ի թիկունս կոյս. և տեսանէ զՅս զի կայր: և ոչ գիտէր թէ Յս իցէ: 15 *Ասէ ցնա Յս: կին դու՝ զի՞ լաս. զո՞ խնդրես: Նմա այսպէս թուեցաւ թէ պարտիզպանն իցէ, ասէ ցնա. Տէր, եթէ դու բարձեր զնա՝ ասա ինձ, ուր եդեր զնա՝ զի ես առից զնա: 16 *Ասէ ցնա Յս՝ մարիամ: Եւ նա դարձաւ, և ասէ ցնա եբրայեցերէն՝ րաբունի: (որ թարգմանի վարդապետ:)

17 *Ասէ ցնա Յս: մի՛ մերձենար յիս. զի չև ևս ելեալ եմ առ հայր իմ: այլ երթ դու առ եղբարս իմ, և ասա ցնոսա: ելանեմ ես առ հայրն իմ, և առ հայր ձեր: և ածն իմ, և ած ձեր: 18 *Գայ մարիամ մագդաղենացի՝ և պատմէ աշակերտացն, եթէ ետես նա զՏր. և զայս ինչ ասաց ցնա:

Մարկ. 16.14. Ղուկ. 24. 36. 1. Կոր. 15.5.

19 *‖ Եւ էր երեկոյ 'ի միաշաբաթոջ աւուրն: և դրօք փակելօք՝ ուր էին աշակերտքն ժողովեալք վն ահին հրէից: եկն Յս՝ և եկաց 'ի միջի նոցա: և ասէ ցնոսա՝ ողջո՛յն ընդ ձեզ: 20 *Իբրև զայս ասաց՝ եցոյց նց զձեռսն և զկողս իւր: և խնդացին աշակերտքն 21 իբրև տեսին զՏր: *Ասէ ցնոսա դարձեալ: ողջո՛յն ընդ ձեզ. որպէս առաքեաց զիս հայր իմ, և ես առաքեմ զձեզ: 22 *Եւ զայս իբրև ասաց՝ փչեաց 'ի նոսա 23 և ասէ: առէք զհոգի սբ: *‖ Եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նց: և եթէ զուրուք ունիցիք՝ կալեալ լիցի:

Մատթ. 16. 19. և 18.18.

24 *Իսկ թովմաս մի յերկոտասանիցն՝ անուանեալն երկուորեակ, ոչ էր ընդ նոսա՝ յորժամ եկն Յս: 25 *Ասէին ցնա այլ աշակերտքն. եթէ տեսաք զՏր: և նա ասէ ցնոսա: եթէ ոչ տեսից 'ի ձեռս նր զնշան բևեռացն, և արկից զմատունս իմ 'ի տեղիս բևեռացն, և մխեցից զձեռս իմ 'ի կողս նր՝ ոչ հաւատամ: 26 *Եւ յետ ութ աւուր դարձեալ էին 'ի ներքս աշակերտքն, և թովմաս ընդ նոսա: գայ Յս դրօքն

փա-

փակելոց. և եկաց 'ի մէջ նոցա, և ասէ. ողջոյն ընդ ձեզ: * Ապա ասէ ցԹովմաս: 27



բեր զմատունս քո՝ և տե՛ս այսր. և տե՛ս զձեռս իմ: և բեր զձեռն քո, և մուծ 'ի կողս իմ. և մի՛ լինիր անհաւատ՝ այլ հաւատացեալ: * Պատասխանի ետ 28 Թովմաս՝ և ասէ ցնա: Տր իմ, և Ած իմ: * Ասէ ցնա Յս: այդ զի տեսերդ զիս՝ 29 և հաւատացեր: երանի, որոց ո՛չ իցէ տեսեալ՝ և հաւատասցեն: * Բազում 30 և այլ նշանս արար Յս առաջի աշակերտաց իւրոց, որ ո՛չ է գրեալ 'ի գիրս յայսմիկ: * Այլ այս այնչափ ինչ գրեցաւ՝ զի հաւատայցէք, եթէ Յս Քս 31 է Որդի Այ: և զի հաւատայցէք, և զկեանսն յաւիտենականս ընդունիցիք յանուն նորա:

Ա յոհ. 21.25.

## Գլ: ԻԱ:

Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց 1 զանձն իւր Յս աշակերտաց իւրոց առ ծովեզերբն տիբերեայ: և յայտնեաց այսպէս: * Էին 'ի միասին սիմոն 2 պետրոս. և Թովմաս անուանեալն երկուորեակ. և Նաթանայէլ որ 'ի կանայ գալիլեացւոց, և որդիքն զեբեդեայ. և այլք յաշակերտաց անտի երկու: * Ասէ ցնոսա սիմոն պետրոս: 3 երթամ ձուկն որսալ: ասեն ցնա, գամք և մեք ընդ քեզ: գնացին, և մտին 'ի նաւ. և յայնմ գիշերի կալան և ոչ ինչ: * Իբրև այգ եղև, կայր Յս 4

ձըն

յեզր ծովուն: բայց ո՛չ ծանեան աշա-
5 կերտքն թէ Յս իցէ. * Ասէ ցնոսա



Յս: մանկունք՝ միթէ ունիք ինչ ուտելոյ: պատասխանի ետուն և ասեն 6 ցնա, ո՛չ: * Ասէ ցնոսա Յս: արկէք յաջակողմն նաւին զուռկանդ, և գտանիցէք: արկին, և ո՛չ կարէին ձգել 'ի բազմութենէ անտի ձկանցն: 7 * Ասէ աշակերտն այն, զոր սիրէրն Յս ցպետրոս: Տր է այն: սիմոն պետրոս՝ իբրև լուաւ թէ Տր է՝ էարկ զիւրև զսփածանելին, (քանզի մերկ էր:) 8 և ընկէց զինքն 'ի ծովն: * Եւ այլ աշակերտքն նաւաւն իսկ գային: (քանզի չէին հեռի 'ի ցամաքէ: այլ իբրև երկերիւր կանգնաւ) քարշէին զգործին 9 հանդերձ ձկամբքն: * Իբրև ելին 'ի ցամաք՝ տեսանեն կրակետղ կայծականց. և ձուկն մի 'ի վերայ՝ և հաց: 10 * Ասէ ցնոսա Յս: բերէք 'ի ձկանցն այտի՝ զոր դուքդ կալայք այժմիկ: 11 * Ամուտ սիմոն պետրոս. և ձգեր զգործին 'ի ցամաք՝ լի մեծամեծ ձկամբք, հարիւր յիսուն և երիւք: և այնչափ ինչ կայր, և ո՛չ պատառեցաւ գործին: 12 * Ասէ ցնոսա Յս: եկայք ճաշեցէք: և ոչ ոք յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ դու ո՞վ ես: զի գիտէին թէ Տրն 13 է: * Գայ Յս՝ և առնու զհացն՝ և տայ 14 նոցա. նոյնպէս և զձուկն: * Զայս երիցս անգամ երևեցաւ Յս աշակերտացն յարուցեալ 'ի մեռելոց:

*Իսկ իբրեւ ճաշեցին՝ ասէ ցսիմոն պետ
րոս Յս. սիմոն յովհաննու սիրես զիս
առաւել քան զդոսա. ասէ ցնա. այո
Տր. եւ դու գիտես՝ զի սիրեմ զքեզ.
ասէ ցնա՝ արածեա զգառինս իմ։ 15
*Դարձեալ ասէ ցնա. սիմոն յովհաննու
սիրես զիս. ասէ ցնա. այո Տր՝ եւ դու
գիտես՝ զի սիրեմ զքեզ. ասէ ցնա՝ ա֊
րածեա զոչխարս իմ։ 16 *Ասէ ցնա ե֊
րիցս անգամ. սիմոն յովհաննու սիրես
զիս. տրտմեցաւ պետրոս, զի ասացն
ցնա երիցս՝ թէ սիրես զիս. եւ ասէ ցնա.
Տր, դու զամ գիտես. եւ դու իսկ զամ
ճանաչես՝ եւ եթէ սիրեմ զքեզ. ասէ
ցնա Յս. արածեա զոչխարս իմ։ 17

‖2.Պետ. 1.14.

*‖Ամէն ամէն ասեմ քեզ. զի մինչ մա
նուկն էիր, անձամբ անձին գօտի
ածէիր՝ եւ երթայիր, յո եւ կամէիր. եւ
յորժամ ծերասցիս, ձեռս ՚ի վեր կալ
ցիս. եւ այլք ածցեն քեզ գօտի, եւ տար
ցին ուր ոչ կամիցիս. 18 *Զայս ասաց՝
նշանակեալ թէ որով մահու փառաւ
որ առնիցէ զԱծ. եւ զայս իբրեւ ասաց,
ասէ ցնա՝ եկ զկնի իմ։ 19

20 *Դարձաւ պետրոս՝ եւ տեսանէ ՚զաշա
կերտն՝ զոր սիրէր Յս, զի երթայր
զկնի. ‖ որ եւ անկաւ զլանջօք նորա՝ եւ
ասէ. Տր, ով է՝ որ մատնելոց է զքեզ։

‖Յովհ. 13.23.

21 *Զնա տեսեալ պետրոսի, ասէ ցՅս.
22 Տր, իսկ սա զի՞. *Ասէ ցնա Յս. եթէ
կամիմ, զի կացցէ դա՝ մինչեւ ես գամ.
քեզ զի՞ փոյթ է՝ դու եկ զկնի իմ։
23 *Ել բանս այս յեղբարս՝ եւ համա
րեցան թէ աշակերտն այն ոչ մեռանի
ցի. եւ ոչ ասաց նմա Յս եթէ ոչ մեռա
նիցի. այլ թէ կամիմ ես՝ թէ կացցէ
24 դա՝ մինչեւ ես գամ. *Այս աշակերտն է
որ վկայէ վասն այսոցիկ. որ եւ գրեացն
իսկ զայսոսիկ. եւ գիտեմք եթէ ճշմա
25 րիտ է վկայութիւն նր. *‖Են այլ եւ այլ
ինչ բազում, զոր արար Յս. որք եթէ
գրեալ էին մի ըստ միոջէ. կարծեմ
թէ եւ ոչ աշխարհս բաւական էր տա
նել զգիրսն՝ որք թէ գրեալ էին.

‖Յովհ. 20.30.



Մինչդեռ հայէին նոքա, վերացաւ. և ամպն կալաւ զնա յաչաց նց: և մինչդեռ պշուցեալ"։ Գործ. 1. 9



Եւ երևեցան նց բաժանեալ լեզուք իբրև 'ի հրոյ. և նստաւ իւրաքանչիւր 'ի վ̃ր նոցա: Գործ. 2. 3.

# ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ:

## Գլուխ Առաջներորդ:



ԲԱՆՆ ԱՌԱՋԻՆ զոր արարի վասն ամ̃ի, ո՜ Թէոփիլէ · զոր սկսաւ Յ̃ս առնել և ուսուցանել: 1

* Մինչև յօրն պատուիրելոյ առաքելոցն 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ: զորս ընտրեաց, և վերացաւ: 2

* Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ չարչարանաց իւրոց 'ի բազում արուեստս՝ յաւուրս քառասուն երևել նց՝ և ասել վ̃ն արքայութե Ա̃յ: 3

* Եւ 'ի հաղորդել ը̃ նոսա հացին, ‖ պատուէր տայր նոցա յե̃մէ մի՛ մեկնել · այլ սպասել աւետեացն Հօր, զոր լուարուքն յինէն: 4

(Margin: ‖ Ղուկ. 24. 49. Յովհ. 14. 26. լնճայ)

5 * ‖ Զի յովհաննէս մկրտեաց 'ի ջուր: ‖ այլ դուք մկրտիցիք 'ի Հոգին ս̃բ, ոչ յետ բազմաց ինչ աւուրցս այսոցիկ:

6 * Եւ նոքա մատուցեալ հարցանէին զնա՝ և ասէին: Տ̃ր՝ եթէ 'ի ժամանակի աստ յայսմիկ հատուցանելո՞յ իցես զարքայութի̃ն ի̃էլի:

7 * Եւ նա ասէ ցնոսա. ոչ է ձեր գիտել զժամս և զժամանակս, զոր Հ̃այր եդ յիւրում իշխանութե̃:

8 * ‖ Այլ առջիք զզօրութի̃ 'ի հասանել Հոգւոյն սրբոյ 'ի վերայ ձեր: և եղիջիք ինձ վկայք յե̃մ, և յամ̃ Հրէաստանի, և 'ի սամարիա. և մինչև 'ի ծագս երկրի:

9 * Եւ զայս իբրև ասաց՝ մինչդեռ հայէին նոքա՝ վերացաւ: և ամպն կալաւ զնա յաչաց նց:

10 * Եւ մինչդեռ պշուցեալ էին ընդ երկինս երթալոյ նորա, ահաւասիկ արք երկու երևեցան նց 'ի հանդերձս սպիտակս:

11 * Որք և ասացին: արք գալիլեացիք՝ զի՛ կայք հայեցեալ ընդ յերկինս:

(Margin: ‖ Մատթ. 3. 11. Մարկ. 1. 8. Ղուկ. 3. 16. Յովհ. 1. 26. ‖ Վայր. 2. 2. Ղուկ. 24. 48.)

այս Յս՝ որ վերացաւն 'ի ձէնջ յեր-
կինս, սոյնպէս եկեսցէ՝ զոր օրինակ
տեսէք զդա երթալ յերկինս։ *Յայն 12
ժամ ապա դարձան յեմ յանուանեալ
լեռնէն Ձիթենեաց։ որ է մերձ յեմ
ըստ շաբաթու ճանապարհի։ *Եւ 13
իբրև մտին 'ի վերնատունն, ելին ուր
վանքն իւր էին. Պետրոս՝ և Յօհան-
նէս. Յակոբոս՝ և Անդրէաս. Փիլիպ-
պոս՝ և Թովմաս. Բարթուղիմէոս՝ և
Մատթէոս. Յակոբոս Ալփեան՝ և
Շմաւօն նախանձայոյզ. և Յուդա
Յակոբեան։ *Սոքա ամենեքեան էին 14
համապազորդեալք միաբան յաղօթս
հանդերձ կանամբք. և Մարեմաւ մարբն
Յի՝ և եղբարբք նորա։ *Եւ յաւուրսն 15
յայնոսիկ յարուցեալ Պետրոս 'ի մէջ
եղբարցն՝ ասէ. (և էր անդ բազմու-
թի անուանց հարիւր և քսանից։)

Սաղմ. 40. 10. *Արք եղբարք՝ պարտ է կատարիլ 16
Յօհան. 13.18. գրոյն, զոր յառաջագոյն ասաց Հո-
գին սբ 'ի բերանոյ Դաւթի՝ վասն Յու-
դայի. որ եղև առաջնորդ ունելեացն
Յի։ *Զի 'ի թիւս մեր էր՝ ընդ մեզ. 17
և հասեալ էր նմա վիճակ պաշտամանս
այսորիկ։ *Սա ստացաւ գեօղ 'ի վար 18
ձուց անիրաւութեն. և ուռուցեալ հեր
ձաւ ընդ մէջ՝ և հեղաւ ամ փոր նր։

(որ եղև առաջնորդ այնոցիկ, որք ըմբռնեցին զՅս։)

Մատթ. 27. 7. *Եւ յայտնի եղև ամենեցուն՝ որք 19
բնակեալ էին յեմ. մինչև կոչել զգեղջն
այնմիկ բարբառովն իւրեանց Ակեղ
դամայ. այսինքն՝ գեօղ արեան։
Սաղմ. 68.26. *Զի գրեալ է 'ի գիրս սաղմոսաց. 20
եղիցի բնակութին նր աւերակ. և մի
Սաղմ. 108. 8. ոք իցէ՝ որ բնակիցէ 'ի նմա։ և զկարգ-
նորա առցէ այլ։ *Արդ՝ պարտ է յա- 21
րանցս յայսցանէ՝ եկելոցս ընդ մեզ
յամ ժամանակի՝ յորում եմուտ և ել
առ մեզ Տր Յս։ *Սկսեալ 'ի մկրտու- 22
թէն յօհաննու մինչև յօրն՝ յորում
վերացաւ 'ի մէնջ. վկայ յարութեն նր
ընդ մեզ լինել միում 'ի սոցանէ։
*Եւ կացուցին երկուս։ զՅովսէփ՝ ո- 23
րում Բարսաբայն կոչէին. որ անուա-
նեցաւն Յուստոս։ և զՄատաթիայ։
*Եւ կացեալ յաղօթս՝ ասեն։ դու Տր՝ 24
սրտագէտ ամի, յայտնեա զմի ոք՝ զոր
ընտրեցեր 'ի սոցանէ յերկոցունց։
*Առնուլ զվիճակ պաշտամանս այսո 25
րիկ՝ և զառաքելութեն, յորմէ անկաւ
Յուդաս՝ գնալ 'ի տեղի իւր։
*Եւ ետուն վիճակս նոցա. և ել վի 26
ճակն Մատաթեայ. և համարեցաւ
ընդ մետասան առաքելսն։

## ԳԼ։ Բ։

Եւ 'ի կատարել աւուրցն պենտէ 1
կոստէից՝ էին ամենեքեան միա-
2 բան 'ի միասին։ *Եւ եղև յանկարծա-
կի հնչիւն յերկնից՝ եկեալ իբրև սաս-
տիկ հողմոյ. և ելից զամ զտունն յո-
3 րում նստէին։ *Եւ երևեցան նոցա
բաժանեալք լեզուք իբրև 'ի հրոյ. և
նստաւ իւրաքանչիւր 'ի վերայ նոցա։
4 *Եւ լցան ամենեքեան Հոգւով սր- Մատթ.
բով. և սկսան խօսիլ այլ լեզուս՝ որպ 3.11.
և հոգին տայր բարբառել նոցա։ Մարկ.
5 *Եւ էին յեմ բնակեալք հրէայք՝ 1. 8. և
արք երկիւղածք յամ ազգաց՝ որք 'ի 16.17.
6 ներքոյ երկնից։ *Եւ իբրև եղև բար Ղուկ.
բառս այս՝ եկն միաբան բազմութին՝ 3.16.
և խռնեցաւ. զի լսէին յիւրաքանչիւր Յօհան.
7 լեզուս խօսիլ նոցա։ *Ապշեալ էին 7. 39.
ամենեքեան, և զարմանային, և ասէ- Վեր.
ին ընդ միմեանս. ոչ աւասիկ ամենե 1. 8.
քին սոքա՝ որք խօսին, Գալիլեացիք Վեր.
8 են։ *Եւ զիարդ լսեմք մեք յիւրա- 11. 16.
քանչիւր բարբառս մեր՝ յորում ծն- և 19.6.
9 եալք եմք։ *Պարթևք՝ և Մարք՝ և Ելա
մացիք՝ և որք բնակեալք էն 'ի Միջա-
գետս՝ 'ի Հրէաստանի՝ և 'ի Գամիրս՝ 'ի
10 Պոնտոս՝ և յԱսիայ։ *'Ի Փռիւգիայ, և
'ի Պամփիւլիայ՝ յեգիպտոս՝ և 'ի կող
մանս Լիբէացւոց. որք ընդ Կիւրե-
նացիս, և որք եկք հռոմայեցիք։
11 *Հրէայք՝ և եկք նոցուն. Կրետացիք՝
և Արաբացիք՝ լսեմք խօսից նց 'ի մեր
12 լեզուս զմեծամեծս Այ։ *Ապշեա-
նային ամենեքեան զարմացեալք, և
ասէին ցմիմեանս, զի՞նչ կամիցի այս
13 լինել։ *Եւ կէսքն ընդ խաղ արկեալ
ասէին, թէ քաղցուալից իցեն։
14 *Յարուցեալ Պետրոս հանդերձ մե-
տասանիւքն՝ ամբարձ զձայն իւր՝ և խօ
սեցաւ ը նոսա։ արք հրէաստանեայք՝
և որք բնակեալք էք յեմ ամենեքին,
այս ձեզ յայտնի լիցի՝ և ունկնդիր լերուք բա
15 նից իմոց։ *Ոչ որպէս դուքդ կար-
ծէք՝ թէ սոքա արբեալք իցեն. զի
դեռ երեք ժամք են աւուր։
16 *Այլ այս է՝ որ ասացաւ 'ի ձեռն մար
17 գարէին յովելեայ։ *Եւ եղիցի յետ Եսայ.
այսորիկ յաւուրս յետինս՝ ասէ Տր. 44.3.
հեղից յՀգւոյ իմմէ 'ի վերայ ամենայն Յովէլ
մարմնոյ. և մարգարէասցին ուստերք 2. 28.
ձեր. և դստերք ձեր. և երիտասարդք
ձեր տեսիլս տեսցեն։ և ծերք ձեր երա
18 զօք երազեսցին։ *Եւ 'ի վր ծառայից
իմոց՝ և 'ի վերայ աղախնայց իմոց յաւ
ուրս յայնոսիկ հեղից յՀգւոյ իմմէ, և
19 մարգարէասցին։ *Եւ տաց նշանս
յերկինս 'ի վեր՝ և նշանս յերկիր 'ի խո
նարհ. արիւն, և հուր, և մրրիկ ծխոյ։
20 *Արեգակն դարձցի 'ի խաւար, և
լուսին յարիւն՝ մինչև եկեալ իցէ օր
Տն մեծ և երևելի։

*Եւ

Յովէլ 2. 32. Յովհ. 10. 13. ԻԲ

21 *Եւ եղիցի ամ որ կարդասցէ զանուն Տն կեցցէ։ 22 *Արք իսրայելացիք ․ լուարուք զբանս զայսոսիկ ․ զՅս նազովրեցի, զայր ցուցեալ յԱյ 'ի ձեզ զօրութբ, և նշանօք, և արուեստիւք, զորս արար նովաւ Այ 'ի միջի ձերում, որպէս և դուք իսկ գիտէք ։ 23 *Զնա նկատեալ խորհրդով և կանխագիտութբն Այ՝ մատնեալ 'ի ձեռս անօրինաց՝ բևեռեալ 'ի փայտի սպանէք ։ 24 *Զոր Այ յարոյց՝ լուծեալ զերկունս մահու ․ քանզի ոչ էր հնար ըմբռնել նմա 'ի նմանէ ։

Սաղմ. 15. 8.

25 *Դաւիթ իսկ ասէ զնմանէ ․ Յառաջագոյն տեսանէի զՏր առաջի իմ յամ ժամ, զի ընդ աջմէ իմմէ է, մի սասանեցայց ։ 26 *Վասն այսորիկ ուրախ եղև սիրտ իմ, և ցնծացաւ լեզու իմ ․ և ևս և մարմին իմ բնակեսցի յուսով ։ 27 *Զի ոչ թողցես զանձն իմ 'ի դժոխս՝ և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութի ։ 28 *Ծանուցեր ինձ զճանապարհս կենաց ․ լցուցես զիս ուրախութեամբ երեսաց քոց ։ 29 *Արք եղբարք՝ պարտ է համարձակութբ ասել ձեզ վն նահապետին դաւթի ․ զի մեռաւ՝ և թաղեցաւ ․ և գերեզման նր կայ 'ի միջի ձերում մինչև ցայսօր ։

Գ Թագ. 2.10.

30 *Զի մարգարէ էր ․ և գիտէր, եթէ երդմամբ երդուաւ նմա Այ 'ի պտղոյ որովայնի նորա նստուցանել յաթոռ նորա ։

Սաղմ. 131.11.

31 *Յառաջագոյն տեսեալ խօսեցաւ վասն յարութեն Քի ․ զի ոչ թողաւ նա 'ի դժոխս՝ և ոչ մարմին նորա ետես զապականութի ։ 32 *Զայս Յս յարոյց Այ՝ որում ամենեքին մեք վկայեմք ։ 33 *Աջովն Այ բարձրացեալ ․ զաւետիս Հոգւոյն սրբոյ ընկալեալ 'ի Հօրէ՝ սփռեաց զայս, զոր դուք իսկ տեսանէք՝ և լսէք ։ 34 *Զի ոչ եթէ դաւիթ ել յերկինս ․ ասէ իսկ ինքն՝ ասաց Տր ցՏր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ ։

Սաղմ. 15.10. Սաղմ. 13. 35. Սաղմ. 109.1.

35 *Մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ 36 *Ապա ճշմարիտ գիտասցէ ամ տունդ իսրայէլի ․ զի Տր զնա և օծեալ Այ արար ․ զայն Յս՝ զոր դուքդ խաչեցէք ։ 37 *Եւ լուեալ զայս՝ զղջացան 'ի սիրտս իւրեանց ․ և ասեն ցպետրոս՝ և ցայլ առաքեալսն ․ զինչ գործեսցուք արք եղբարք ։ 38 *Ասէ ցնս պետրոս ․ ապաշխարեցէք և մկրտեսցի իւրաքանչիւրոք 'ի ձէնջ յանուն Տն Յի Քի 'ի թողութի մեղաց ․ և ընկալջիք զաւետիս հոգւոյն սրբոյ ։ 39 *Զի ձեզ են աւետիքս՝ և որդւոց ձերոց ․ և ամ հեռաւորաց՝ զորս կոչեսցէ Տր Այ մեր ։ 40 *Եւ այլովք բանիւք բազմօք վկայութի դնէր, և միխթարէր զնս՝ և ասէր ․ ապրեցարուք յազգէ աստի խոտորելոյ յայսմանէ ։ 41 *Նոքա յօժարութբ ընկալեալք զբան նորա՝ մկրտեցան ․ և յաւելան յաւուր յայնմիկ հոգիք իբրև երեք հազարք ։

ԻԳ

42 *Եւ էին համապազորդեալք վարդապետութեն առաքելոցն ․ և հաղորդութեն և բեկանելոյ հացին, և աղօթից ։ 43 *Եւ լինէր ամ անձին՝ ահ և երկիւղ ․ բազում նշանք և արուեստք 'ի ձեռս առաքելոցն գործէին ։ 44 *Ամ հաւատացեալքն էին 'ի միասին ․ և ունէին 45 զամ ինչ հասարակաց ։ *Եւ զստացուածս և զինչս վաճառէին, և բաշխէին զայն ամենեցուն՝ ում զիարդ պիտոյ ինչ լինէր ։ 46 *Համապազօր կանխեալ միաբանութբ 'ի տաճարին ․ և առտնին բեկանէին զհացն ․ և առնուին զկերակուր ուրախութբ, և միամտութբ սրտի ։ 47 *Օրհնէին զԱյ՝ և ունէին շնորհս առ ամ ժողովուրդն ․ և Տր յաւելոյր 'ի փրկեալսն համապազօր 'ի նոյն ։

## ԳԼ․ Գ․

1 Պետրոս և յօհաննէս ելանէին 'ի տաճար անդր յիններորդ ժամու աղօթիցն ։ 2 *Եւ էր այր մի կաղ յորովայնէ մօր իւրոյ՝ զոր բարձեալ դնէին համապազ առ դրան տաճարին, որ կոչիւր գեղեցիկ ․ խնդրել ողորմութի յայնցանէ՝ որք մտանէին 'ի տաճարն ։ 3 *Որոյ տեսեալ զպետրոս և զյօհաննէս՝ զի մտանէին 'ի տաճարն, աղաչէր 4 զողորմութի առնուլ ։ *Հայեցաւ 'ի նա պետրոս յօհաննու հանդերձ, և 5 ասէ ․ հայեաց 'ի մեզ ։ *Նա դարձաւ 'ի նոսա, և ակն ունէր առնուլ ինչ 'ի 6 նոցանէ ։ *Եւ ասէ պետրոս, զարծաթ և զոսկի ոչ ունիմ ․ բայց զոր ունիմ, զայս տամ քեզ ․ յանուն Յի Քի նազովրեցւոյ արի, և գնա ։ 7 *Եւ կալեալ զաջոյ ձեռանէ նր՝ յարոյց զնա ․ և անդէն հաստատեցան բարձք նր և սրունք ։ 8 *Ի վեր վազեաց՝ և կայաւ գնալ ․ և եմուտ ընդ նոսա 'ի տաճարն ․ գնայր, և 9 վազէր՝ և օրհնէր զԱյ ։ *Եւ ետես ամ ժողովուրդն զնա ․ զի գնայր, և 10 օրհնէր զԱյ ։ *Եւ գիտէին զնա՝ զի սա էր, որ նստէր վասն ողորմութեն առ գեղեցիկ դրան տաճարին ․ և լցան զարմանալեօք 'ի վերայ նշանին, որ եղև ։ 11 *Եւ մինչ նա ունէր զպետրոս և զյօհաննէս, ընթացաւ ամ ժողովուրդն առ նոսա 'ի սրահն՝ որ կոչիւր սողոմոնի՝ զարմացեալք ։ 12 *Իբրև ետես պետրոս, պատասխանի ետ ժողովրդեանն ․ արք իսրայելացիք՝ զի՞ զարմացեալ էք 'ի վերայ

այ-

այսորիկ՝ կամ ընդ մեզ զի՞ էք պշուցեալք, իբր թէ անձին զօրութբ ինչ կամ քաջութբ արարեալ իցէ զգնալդ դմա: 13 *Ած աբրահամու՝ և Ած իսահակայ՝ և Ած յակոբայ, Ած հարցն մերոց փառաւորեաց զորդի իւր զՅս․ զոր դուքն մատնեցիք՝ և ուրացայք զնա առաջի պիղատոսի, 'ի դատելն նր արձակել: 14 *Այլ դուք զսբն և զարդարն ուրացայք․ և խնդրեցիք զայր մի մարդասպան շնորհել ձեզ: 15 *Այլ զառաջնորդ կենացն սպանիք․ զոր ած յարոյց 'ի մեռելոց․ որում մեք իսկ վկայք եմք: 16 *Այլ հաւատովք անուան նորա զսա՝ զոր տեսանէքդ և գիտէք՝ հաստատեաց անունն նր: և հաւատքն, որք նովաւ՝ ետուն դմա զառողջութիւս զայս՝ յանդիման ձեր ամենեցուն: 17 *Այլ արդ եղբարք՝ գիտեմ, զի անգիտութբ արարէք՝ որպէս և իշխանքն ձեր:
18 *Այլ ած՝ որ յառաջագոյն պատմեաց 'ի բերանոյ ամենայն մարգարէից զչարչարելն Քի իւրոյ՝ նոյնպէս և կատարեաց: 19 *Արդ՝ ապաշաւեցէք և դարձարուք 'ի ջնջել զմեղս ձեր: 20 *Որպէս զի եկեսցեն ժամանակք հանգստեան յերեսաց Տն․ և առաքեսցէ զյառաջագոյն նկատեալն ձեզ զՅս Քս:
21 *Զոր պարտ է երկնից ընդունել մինչև 'ի ժամանակս ամենեցուն հաստատելոյ: զորոց խօսեցաւ ած 'ի բերանոյ սրբոց իւրոց մարգարէից:
22 *Մովսէս ասաց ցհարսն, Թէ մարգարէ յարուսցէ ձեզ Տր ած ձեր յեղբարց ձերոց իբրև զիս, նմա լուիջիք ըստ ամի, որ ինչ և խօսեսցի առ ձեզ:
23 *Եւ եղիցի ամ անձն, որ ոչ լուիցէ մարգարէին այնմիկ, սատակեսցի 'ի ժողովրդենէն: 24 *Եւ ամ մարգարէք՝ որք 'ի սամուէլէ և այսր՝ խօսեցան, և պատմեցին զաւուրս զայսոսիկ:
25 *Դուք էք որդիք մարգարէիցն, և ուխտին, զոր ուխտեաց ած ընդ հարս ձեր: և ասէ ցաբրահամ․ 'Ի զաւակի քում օրհնեսցին ամ ազգք երկրի:
26 *Ձեզ նախ յարոյց ած զորդի իւր․ և առաքեաց զնա օրհնել զձեզ՝ 'ի դառնալ ձեզ իւրաքանչիւր 'ի չարեաց ձերոց:

Մատթ. 27. 20. Մարկ. 15. 11. Ղուկ. 23. 18. Յովհ. 18. 40.

Բ.Դ.

Բ. Օրէ. 18.15.

Ծննդ. 12. 3. և 26. 4.

## ԳԼ: Դ:

1 Եւ մինչդեռ խօսէին նոքա ընդ ժողովրդեանն, հասին 'ի վերայ նց քահանայքն և իշխանք տաճարին, և սադուկեցիքն: 2 *Զայրագնեալք վն ուսուցանելոյ նոցա զժողովուրդն՝ և պատմելոյ Յիւ զյարութն մեռելոց: 3 *Արկեցին 'ի նս զձեռս իւրեանց․ և եդին զնս 'ի բանտի, մինչև 'ի վաղիւն, զի էր ընդ երեկս: 4 *Իսկ բազումք 'ի լսողաց բանին՝ հաւատացին: և եղև թիւ մարդկան իբրև հազարաց հինգ: 5 *Եւ եղև 'ի վաղիւն անդր՝ ժողովել նց զիշխանսն՝ և զերիցունս՝ և զդպիրս յէմ: 6 *Եւ զաննայ քահանայապետ և զկայիափայ․ և զյօհաննէս․ և զաղեքսանդրոս․ և որք միանգամ էին յազգէ քահանայութեն: 7 *Եւ կացուցեալ զնոսա 'ի մէջ՝ հարցանէին: որով զօրութբ, կամ որով անուամբ արարիք դուք զայս:
8 *Յայնժամ պետրոս լցեալ հոգւով սրբով՝ ասէ ցնոսա․ իշխանք ժողովրդեան, և երիցունք իէլի: 9 *Եթէ արժան ինչ իցէ դատել զմեզ այսօր վն երախտեաց առն միոյ տկարի, որով սա 10 բժշկեցաւ: *Յայտնի լիցի ամենեցուն ձեզ՝ և ամ ժողովրդեանն իէլի: զի յանուն Յի Քի նազովրեցւոյ՝ զոր դուքն խաչեցիք՝ զոր ած յարոյց 'ի մեռելոց․ նովաւ սա կայ աւասիկ առաջի 11 ձեր ողջացեալ: *Նա է վէմ անարգեալ 'ի ձէնջ շինողաց: որ եղև գլուխ 12 անկեան: *Եւ չիք այլով իւիք փրկութի: զի և ոչ անուն այլ դոյ 'ի ներքոյ երկնից տուեալ 'ի մարդիկ՝ որով արժան իցէ կեալ մեզ:
13 *Հայեցեալ 'ի համարձակութին պետրոսի և յօհաննու, և 'ի վր հասեալ թէ արք տգէտք՝ և առանց դպրութեան էին, զարմանային, զի ծանաչէին զնս 14 թէ ընդ Յի էին: *Եւ զայրն ևս տեսանէին զբժշկեալն՝ զի կայր ընդ նոսա․ և ոչ կարէին տալ պատասխանի: 15 *Եւ հրամայեալ նց արտաքս քան զատեանն ելանել․ խորհէին ը միմեանս. 16 *Եւ ասեն՝ զինչ արասցուք արանցս այսոցիկ՝ զի երևելի նշան եղև 'ի ձեռն սոցա: ամ իսկ բնակչաց եէմի յայտ է, 17 և ոչ կարեմք ուրանալ: *Այլ զի մի առաւել ծառակեսցի 'ի ժողովուրդն՝ սպառնասցուք նց, մի ևս խօսիլ յանունն յայն՝ մի ումեք 'ի մարդկանէ: 18 *Եւ կոչեալ զնոսա՝ պատուիրեցին ամենևին մի խօսիլ՝ և մի ուսուցանել 19 յանուն Յի: *Իսկ պետրոս և յօհաննէս պատասխանի ետուն և ասեն ցնս: եթէ արժան իցէ առաջի Այ՝ ձեզ լսել առաւել քան Այ՝ ընտրեցէք: 20 *Այլ մեք ոչ կարեմք, զոր տեսաքն և 21 լուաք՝ չխօսիլ: *Նոքա սպառնացեալ արձակեցին զնոսա, և ոչինչ գտեալ թէ ո՞րպէս պատուհասեսցեն զնս վասն ժողովրդեանն․ զի ամենեքեան փառաւոր առնէին զած՝ վասն իրացն եղելոյ: 22 *Զի ամաց էր այրն՝ աւելի քան զքա-

ռա-

Սաղմ. 117. 22. Եսայ. 28. 16. Մատթ. 21. 42.

Բ.Ե.

Մարկ. 12. 10. Ղուկ. 20. 17. Հռոմ. 9. 33. 1. Պետ. 2. 7.

ռատուն՝ յորոյ վերայ եղև նշանս այս
բժշկութեն : 23 * Եւ անտի արձակեալք
եկին առ իւրեանսն . և պատմեցին ,
որչափ ինչ ասացին ցնոսա քահանայա
պետքն և երիցունքն : 24 * Եւ նք լուեալ՝
ամբարձին զձայնս իւրեանց առ Ած
և ասեն : դու Տր Ած՝ որ արարեր զեր
կինս և զերկիր՝ զծով և զամ, որ է 'ի
նոսա : 25 * Որ 'ի բերանոյ հօր մերոյ դաւ
թի ծառայի քոյ՝ 'ի ձեռն հոգւոյն սր
բոյ ասացեր : Ընդէ՞ր խռովեցան հե
թանոսք՝ և ժողովուրդք խորհեցան
սնոտիս : 26 * Յարեան թագաւ
որք երկրի . և իշխանք ժողովեցան 'ի
միասին, վասն Տն և վասն օծելոյ նր :
27 * Ժողովեցան արդարև 'ի քաղաքիս
յայսմիկ, 'ի վերայ սրբոյ Որդւոյ քոյ
Յի, զոր օծերն . Հերովդէս՝ և պոնտացի
պիղատոս՝ ազգօք և ժողովրդօք Իլի :
28 * Առնել որչափ ձեռն քո և կամք յա
ռաջագոյն սահմանեցին լինել : 29 * Եւ
արդ Տր, հայեաց 'ի սպառնալիսն նց՝
և տուր ծառայից քոց ամ համարձա
կութբ խօսիլ զբանն քո : 30 * 'Ի ձգել
զձեռն քո 'ի բժշկութի, և նշանս , և
արուեստս, լինել անուամբ սրբոյ Որդ
ւոյ քոյ Յի : 31 * Եւ մինչ կային նոքա
յաղօթս՝ շարժեցաւ տեղին՝ յորում
էին ժողովեալ : և լցան ամենեքին հոգ
ւով սրբով . և խօսէին զբանն Այ
համարձակութբ :

Ա.Զ.

32 * Եւ բազմութի հաւատացելոցն էր
սիրտ և անձն մի : և ոչ՛ք 'ի նոցանէ ա
սէր զընչից իւրոց թէ իւր իցէ . այլ էր
նց ամ ինչ հասարակաց : 33 * Եւ զօրու
թբ բազմաւ տային զվկայութի առա
քեալքն յարութենն Տն Յի Քի : և
շնորհք մեծամեծք էին 'ի վերայ ամե
նեցուն նց : 34 * Եւ ոչ՛ք կարօտիւր 'ի
նոսա : զի որք միանգամ տեարք էին
գիւղից կամ ապարանից՝ վաճառէին,
և բերէին զգինս վաճառելոցն :
35 * Դնէին առ ոտս առաքելոցն : և բաշ
խէին իւրաքանչիւր՝ որպէս ումեք պի
տոյ լինէր : 36 * Յոսէփ, որ կոչեցաւն
բառնաբաս յառաքելոց անտի : ( որ
թարգմանի որդի մխիթարութե : )
ղևտացի՝ յազգէ կիպրացի : 37 * Էր նր
գիւղ . վաճառեաց , և եբեր զգինսն՝
և եդ առ ոտս առաքելոցն :

Սաղմ. 2. 1.

## ԳԼ : Ե :

1 Իսկ այր ոմն անանիա անուն, հան
դերձ կնաւ իւրով սափիրաւ . վա
ճառեաց զագարակ : 2 * Եւ խորեաց 'ի
գնոց անտի՝ գիտելով և կնոջն . և եբեր
մասն ինչ՝ եդ առ ոտս առաքելոցն :
3 * Ասէ պետրոս . անանիա, ընդէ՞ր ելից
սատանայ զսիրտ քո՝ ստել քեզ Հոգ
ւոյն սրբոյ, և խորել 'ի գնոց գեղջն :
4 * Ոչ ապաքէն մինչ կայրն՝ քո էր . և 'ի
վաճառելն ընդ քո իշխանութբ էր :
զի՞ է՝ զի եդեր 'ի սրտի քում զիրս զայս
ոչ ստեցեր մարդկան , այլ Այ :
5 * Եւ լուեալ անանիա զբանս զայսո
սիկ՝ անկաւ, և եհան զոգի : և եղև ահ
մեծ 'ի վերայ ամենեցուն, որք լուանն
զայն : 6 * Յոտն կացին երիտասարդքն՝
և ամփոփեցին զնա՝ և տարեալ թաղե
ցին : 7 * Եւ եղև իբրև ժամք երեք ան
ցին, և կին նր ոչ գիտէր զինչ եղեալն
էր՝ եմուտ 'ի ներքս : 8 * Պատասխանի
ետ նմա պետրոս՝ և ասէ : ասա՛ դու
ինձ՝ թէ ա՛յնչափ գնոց զգեօղն վա
ճառեցիք : և նա ասէ՝ այո՞ այնչափ :
9 * Եւ ասէ ցնա պետրոս . զի՞ է՝ զի միա
բանեցայք դուք փորձել զՀոգին Տն .
ահա ոտքն , որք թաղեցին զայրն քո՝ 'ի
դրան, հանցեն և զքեզ : 10 * Եւ անկաւ
անդէն առ ոտս նորա՝ և եհան զոգի :
մտին երիտասարդքն՝ գտին զնա մե
ռեալ . և հանին, և թաղեցին առ առն
իւրում : 11 * Եւ եղև երկիւղ մեծ 'ի վր
ամենայն եկեղեցւոյն . և 'ի վերայ ա
մենեցուն՝ որք լուան զայն :

ոտքն նց. որք

Ա.Է.

12 * Եւ 'ի ձեռս առաքելոցն լինէին նր
շանք և արուեստք բազումք 'ի ժողովր
դեանն : և էին միաբան ամենեքեան 'ի
սրահին սողոմոնի : 13 * Եւ յայլոց անտի
ոչ՛ք իշխէր մերձենալ առ նոսա : այլ
յարգէր զնս ժողովուրդն : 14 * Եւ ա
ռաւել ևս յաւելանային հաւատա
ցեալքն 'ի Տր, բազմութի արանց և
կանանց : 15 * Մինչև 'ի հրապարակս
հանել զհիւանդս , և դնել պատգարա
կօք և մահճօք իւրեանց . զի ընդ ան
ցանելն պետրոսի՝ գոնէ հովանի նորա
հասցէ ումեք 'ի նոցանէ : 16 * Եւ ժողո
վիւր բազմութի շուրջ 'ի քաղաքաց ան
տի յէմ : բերէին զհիւանդս և զնե
ղեալս յայսոց պղծոց . որք և բժշկէին
ամենեքեան : 17 * Յարուցեալ քահանայ
ապետն , և ամենեքին որք ընդ նմա
(աղանդն սադուկեցւոց ) լցան նախան
ձու : 18 * Եւ արկին զձեռս յառաքեալսն՝
և եդին զնս հրապարակաւ 'ի բանտի :
19 * Այլ հրեշտակ Տն 'ի գիշերի եբաց
զդուրս բանտին . և հանեալ զնս՝ ասէ :
20 * Գնացէք, կացէք 'ի տաճարին, և խօ
սեցարո՛ւք ընդ ժողովրդեանն զամ
պատգամս կենացս այսոցիկ : 21 * Եւ իբ
րև լուան , մտին ընդ առաւօտն 'ի տա
ճարն՝ և ուսուցանէին : եկն քահանայա
պետն՝ և որք ընդ նմա, կոչեցին միա
բան զատեանն, և զամ ծերակոյտ որդ
ւոյն Իլի , և առաքեցին 'ի բանտն

ածել

ածել զնս։ 22 *Եւ իբրեւ եկին սպասաւորքն՝ ոչ գտին զնոսա 'ի բանտին։ դարձեալ անդրէն պատմեցին։ 23 *Եւ ասեն։ Թէ զբանտն գտաք փակեալ ամ զգուշուԹբ. եւ զպահապանսն՝ զի կային առ դրանն. բացաք՝ եւ 'ի ներքս զոք ոչ գտաք։ 24 *Իբրեւ լուան զբանս զայս իշխանք տաճարին՝ եւ քահանայապետքն, հիացան վասն նոցա, Թէ զինչ արդեօք լինիցի այն։ 25 *Եւ եկն ոմն պատմեաց նց՝ Թէ ահա արքն՝ զորս եդիք 'ի բանտի՝ կան 'ի տաճարին, եւ ուսուցանեն զժողովուրդն։ 26 *Յայնժամ երԹեալ իշխանն սպասաւորօքն հանդերձ՝ էած զնս ոչ բռնուԹբ։ քանզի երկնչէին 'ի ժողովրդենէն՝ զի մի քարկոծեսցին։ 27 *Եւ ածեալ զնոսա՝ կացուցին յատենի։ եհարց զնոսա քահանայապետն։ 28 *Եւ ասէ։ ոչ պատուէրելով պատուէրեցաք ձեզ, մի ուսուցանել յանունն յայն։ եւ արդ ահաւասիկ լցիք զԵրմ ուսմամբ ձերով։ եւ կամիք ածել 'ի վր մեր զարիւն առն այնորիկ։ 29 *Պատասխանի ետ պետրոս եւ այլ առաքեալքն՝ եւ ասեն. հնազանդիլ պարտ է Այ՝ առաւել քան մարդկան։ 30 *Այ հարցն մերոց յարոյց զՅս՝ զոր դուք սպանիք կախեալ զփայտէ։ 31 *Զնա Այ առաջնորդ եւ փրկիչ բարձրացոյց աջով իւրով տալ զապաշխարուԹի իլի՝ եւ զԹողուԹի մեղաց։ 32 *Եւ մեք եմք վկայք բանիցս այսոցիկ։ եւ Հոգին սբ՝ զոր ետ Այ հնազանդելոց իւրոց։ 33 *Եւ նոքա իբրեւ լուան, առատանային. եւ խորհէին սպանանել զնոսա։

Բ.Կ

34 *Յարուցեալ ոմն 'ի մէջ ատենին փարիսեցի՝ որում անուն էր գամաղիէլ։ օրէնսուսոյց՝ պատուական ամ ժողովրդեանն. հրամայեաց սակաւիկ մի զարսն արտաքս տանիլ։ 35 *Եւ ասէ ցնս՝ արք իլայէլք. հայեցարուք 'ի ձեզ վն արանցս այսոցիկ՝ զինչ արժան է գործել։ 36 *Յառաջ քան զաւուրս զայսոսիկ յարեաւ Թեւդաս ասել զանձնէ, Թէ իցէ ոմն։ յոր անկան արք Թուով իբրեւ չորեքհարիւր։ որ սպանաւ՝ եւ ամենեքեան, որք միաբանեալ էին ընդ նմա, քակտեցան՝ եւ եղեն ոչինչ։ 37 *Յետ նր յարեաւ յուդա գալիլեացի՝ յաւուրս աշխարհագրին. եւ ապստամբեցոյց զժողովուրդ բազում զկնի իւր։ եւ նա կորեաւ՝ եւ ամենեքեան որք նմա հաւանեալք էին, ցրուեցան։ 38 *Եւ զարդ իսկ ասեմ ձեզ. 'ի բաց կացէք յարանցդ յայդցանէ։ եւ Թոյլ տուք դոցա. զի Թէ 'ի մարդկանէ իցէ խորհուրդդ այդ՝ կամ գործ, քակտեսցի։ 39 *ԱպաԹէ յԱյ է՝ ոչ կարէք քակտել զդոսա։ դուցէ եւ Այ ճամարտք գտանիցիք։ Հաւանեցան նմա։ 40 *Եւ կոչեալ զառաքեալսն՝ գան հարին. եւ պատուէրեցին մի խօսել յանունն Յի. եւ արձակեցին զնս։ 41 *Եւ նոքա գնացին խնդալով յերեսաց ատենին. զի վասն անուանն Տն արժանի եղեն անարգելոյ։ 42 *Եւ զամ օր 'ի տաճարին, եւ առտնին ոչ դադարէին յուսուցանել եւ աւետարանել զՅս Քս։

Յն

## Գլ. Զ.

1 Եւ յաւուրսն յայնոսիկ 'ի բազմանալ աշակերտացն, եղեւ տրտունջ յունաց առ հեբրայեցիսն. զի արհամարհեալ լինէին 'ի պաշտամանն հանապազորդ այրիք նց։ 2 *Կոչեցին երկոտասանքն զբազմուԹիւն աշակերտացն՝ եւ ասեն։ ոչ է հաճոյ մեզ Թողուլ զբանն Այ՝ եւ պաշտել զսեղանս. 3 *Ընտրեցէք եղբարք, վկայեալս 'ի ձէնջ՝ արս եօԹն՝ լիս Հոգւով սրբով եւ իմաստուԹբ. զորս կացուսցուք 'ի վր պիտոյիցս այսոցիկ։ 4 *Եւ մեք աղօԹից՝ եւ պաշտաման՝ եւ բանին հպատակ լիցուք։ 5 *Եւ հաճոյ Թուեցաւ առաջի ամ բազմուԹեն։ եւ ընտրեցին զստեփաննոս՝ այր լի հաւատով եւ հոգւով սրբով. եւ զփիլիպպոս. եւ զպրոքորոն. եւ զնիկանովրայ։ եւ զտիմոնայ. եւ զպարմենայ. եւ զնիկողայոս զեկն անտիոքացի։ 6 *Զորս կացուցին առաջի առաքելոցն. եւ աղօԹս արարեալ 7 եդին 'ի վր նց զձեռս։ *Եւ բանն այ աճէր. եւ բազմանայր Թիւ աշակերտացն յոյժ յԵրմ։ եւ բազում ժողովք 'ի քահանայիցն անսային հաւատոյն։

Բ.Բ

8 *Ստեփաննոս՝ այր լի շնորհօք եւ զօրուԹբ առնէր արուեստս՝ եւ նշանս մեծամեծս 'ի ժողովրդեանն։ 9 *Յարեան ոմանք 'ի ժողովրդենէն, որ կոչիւր լիբեռնացւոց՝ եւ կիւրենացւոց՝ եւ աղեքսանդրացւոց՝ եւ որ 'ի կիլիկիեցւոց՝ եւ յասիայ, վիճել ընդ ստեփաննոսի։ 10 *Եւ ոչ կարէին զդէմ ունել իմաստուԹեանն եւ Հոգւոյն, որով խօսէր։ 11 *Յայնժամ հրապուրեցին արս ոմանս ասել. լուաք զդորա խօսիլ բանս հայհոյուԹե 'ի մովսէս եւ յԱծ։ 12 *Եւ խռովեցին զժողովուրդն, եւ զծերս, եւ զդպիրսն։ եւ հասեալ 'ի վերայ՝ յափշտակեցին զնա՝ եւ ածին յատեանն։ 13 *Եւ կացուցին վկայս սուտս՝ որք ասէին, այրս այս ոչ դադարէ խօսել բանս հայհոյուԹե զտեղւոյս սրբոյ եւ 14 զօրինացն։ *Լուաք 'ի դմանէ, զի ասէր՝ Թէ Յս նազովրեցի նա քակեսցէ զտե-

զտեղիս զայս՝ և փոխեսցէ զօրէնս՝ զորս ետ մեզ մովսէս։ 15 *Եւ հայեցեալ 'ի նա ամենեցուն, որք նստէին յատենին, տեսին զերեսս նորա իբրև զերեսս հրեշտակի։

## Գլ. Է։

1 Ասէ քահանայապետն՝ թէ արդարև այդ այդպէ՞ս իցէ։ 2 *Եւ նա ասէ՝ արք եղբարք և հարք՝ լուարու՞ք ինձ։ Ա՟Ծ փառաց երևեցաւ հօր մերում աբրահամու մինչդեռ 'ի միջագետս էր. մինչչև բնակեցուցեալ էր զնա 'ի խառան. և ասէ ցնա։ 3 *Ե՛լ յերկրէ քումմէ և յազգէ քումմէ՝ և եկ յերկիր՝ զոր ցուցից քեզ։ 4 *Յայնժամ ելեալ յերկրէն քաղդէացւոց՝ բնակեցաւ 'ի խառան։ և անտի յետ մեռանելոյ հօրն ն՟ր՝ փոխեաց. և պանդխտեցոյց զնա յերկիրս յայսմիկ, յորում դուք այժմ բնակեալ էք։ 5 *Եւ ոչ ետ նմա զժառանգութի 'ի սմա, և ոչ քայլ մի ոտին։ և խոստացաւ տալ նմա զսա 'ի բնակութի. և զաւակի ն՟ր յետ ն՟ր. մինչ ոչ գոյր ն՟ր որդի։ 6 *Խօսեցաւ Ա՟Ծ այսպէս, թէ եղիցի զաւակ ն՟ր պանդուխտ յօտար երկրի։ և ծառայեցուսցեն զնա. և չարչարեսցեն զնա ամս չորեքհարիւր։ 7 *Եւ զազգն՝ որում ծառայեսցեն, դատեցայց ես ասէ ա՟ծ։ և յետ այսորիկ ելցեն՝ և պաշտեսցեն զիս 'ի տեղւոջս յայսմիկ։ 8 *Եւ ետ նմա ուխտ թլփատութե։ և այսպէս ծնաւ զիսահակ։ և թլփատեաց զնա յաւուր ութերորդի։ և իսահակ զյակոբ։ և յակոբ զերկոտասան նահապետսն։ 9 *Եւ նահապետքն նախանձեալ ընդ յովսեփայ՝ վաճառեցին յեգիպտոս. և էր Ա՟Ծ ընդ նմա։ 10 *Եւ փրկեաց զնա յա՟մ նեղութեց ն՟ր։ և ետ նմա շնորհս և իմաստութի առաջի փարաւոնի արքային եգիպտացւոց. և կացոյց զնա իշխան եգիպտացւոյն, և ա՟մ տան ն՟ր։ 11 *Եւ եկն սով յա՟մ երկիրն եգիպտոսի. և 'ի քանան նեղութի մեծ։ և ոչ գտանէին կերակուր հարքն մեր։ 12 *Եւ լուեալ յակոբայ թէ գտանի կերակուր յեգիպտոս՝ առաքեաց ըզհարսն մեր յառաջագոյն։ 13 *Եւ յերկրորդումն ետ ծանօթս յովսէփ եղբարց իւրոց. և յայտնի եղև փարաւոնի ազգ նորա։ 14 *Առաքեաց յովսէփ, և կոչեաց զյակոբ զհայր իւր. և զա՟մ ազգատոհմն. ոգիս եօթանասուն և հինգ։ 15 *Եւ էջ յակոբ յեգիպտոս՝ և վախճանեցաւ ինքն և հարքն մեր։ 16 *Եւ փոխեցան 'ի սիւքեմ, և եդան յայրին, զոր ստացաւ աբրահամ գնոց արծաթոյ

յոր

Ծննդ. 12. 1. — Ծննդ. 15. 13. — Ծննդ. 17. 10. — Ծննդ. 21. 2. 4. — Ծննդ. 25. 24. և 25. — Ծննդ. 29. 32. և 35. 22 — Ծննդ. 37. 28. — Ծննդ. 41. 37. և 41. — Ծննդ. 42. 2. — Ծննդ. 45. 3. — Ծննդ. 46. 5. — Ծննդ. 49. 32. — Ծննդ. 23. 16.

յորդւոցն եմորայ՝ որդւոյ սիւքեմայ։ 17 *Իբրև մերձեցաւ ժամանակ աւետեացն, զոր խոստացաւ Ա՟Ծ աբրահամու, աճեաց ժողովուրդն՝ և բազմացաւ յեգիպտոս։ 18 *Մինչև յարեաւ այլ թագաւոր յեգիպտոս՝ որ ոչ ճանաչէր զյովսէփ։ 19 *Նա հնարեցաւ ազգին մերում, և չարչարեաց զհարսն մեր առնել ընկեցիկ զմանկունս ն՟ց՝ զի մի ապրեսցին։ 20 *Յորում ժամանակի ծնաւ և մովսէս՝ և էր կայտառ առաջի Ա՟Յ. որ սնաւ 'ի տան հօր իւրոյ ամիսս երիս։ 21 *Եւ յընկեցիկ առնել զնա՝ եբարձ զնա դուստր փարաւոնի. և սնոյց զնա իւր յորդեգիրս։ 22 *Եւ վարժեցաւ մովսէս ա՟մ իմաստութ՟ե եգիպտացւոց. և էր զօրաւոր բանիւք և գործովք իւրովք։ 23 *Իբրև լցան ն՟ր քառասնամեայ ժամանակ, անկաւ 'ի սիրտ նորա շրջել զեղբարբք իւրովք՝ զորդւովքն ի՟լի։ 24 *Եւ տեսեալ զոմն զրկեալ՝ զչարեցաւ, և խնդրեաց զվրէժ զրկելոյն, սպանեալ զեգիպտացին։ 25 *Ոմաւ ածէր թէ իմասցին եղբարք նորա, զի ա՟ծ 'ի ձեռն նորա տալոց էր զփրկութի ն՟ց. և նոքա ոչ իմացան։ 26 *Եւ 'ի վաղիւն անդր երևեցաւ ն՟ց մինչ դեռ մարտնչէին՝ և վարեաց զնոսա 'ի խաղաղութի. ասէ, արք եղբարք էք, ընդէ՞ր զրկէք զմիմեանս։ 27 *Իսկ որ զրկէր զընկերն, մերժեաց զնա՝ և ասէ. ո՞ կացոյց զքեզ իշխան և դատաւոր 'ի վերայ մեր։ 28 *Միթէ սպանանե՞լ կամիցիս զիս՝ զոր օրինակ սպաններ երէկ զեգիպտացին։ 29 *Եւ փախեաւ մովսէս 'ի բանիցս յայսցանէ, և եղև պանդուխտ յերկրին մադիանու. ուր ծնաւ երկուս որդիս։ 30 *Եւ 'ի կատարել ամացն քառասնից, երևեցաւ նմա յանապատի լերինն սինայ հրեշտակ Տ՟ն 'ի բոց հրոյ մորենւոյն։ 31 *Եւ մովսէս տեսեալ՝ զարմացաւ ընդ տեսիլն, և 'ի մատչելն նորա նշմարել՝ եղև ձայն Տ՟ն։ 32 *Ես եմ ա՟ծ հարցն քոց. Ա՟Ծ աբրահամու. Ա՟Ծ իսահակայ. և Ա՟Ծ յակոբու։ և զահի հարեալ մովսէս՝ ոչ իշխէր հայիլ։ 33 *Եւ ասէ ցնա Տ՟ր. լո՛յծ զկօշիկս յոտից քոց. զի տեղիդ՝ յորում դուդ կայցեր՝ երկիր սուրբ է։ 34 *Տեսանելով տեսի զչարչարանս ժողովրդեան իմոյ՝ որ յեգիպտոս. և լուայ հեծութե ն՟ց՝ և իջի փրկել զնոսա. և արդ՝ եկ, առաքեցից զքեզ յեգիպտոս։ 35 *Զայն մովսէս՝ զոր ուրացանն, և ասէին. ո՞ կացոյց զքեզ իշխան և դատաւոր 'ի վ՟ր մեր. զնա Ա՟Ծ իշխան և փրկիչ առաքեաց 'ի ձեռն հրեշտակին, որ երևե

Rrrrrr ցաւ

Ծննդ. 50. 5. 13. — Յեսու. 24. 32. — Ելից. 1. 7. — Ելից. 2. 2. — Եբրայ. 11. 23. — այց առնել եղբարցն իւրոց — Ելից. 2. 12. — Ելից. 2. 13. — ԻԳ — Ելից. 3. 2.

ցաւ նմա 'ի մորենւոջն։ *Նա եհան զնոսա արարեալ նշանս և արուեստս յերկրին եգիպտացւոց՝ և 'ի կարմիր ծովուն, և յանապատին ամս քառասուն։ 37 *Այս մովսէս է, որ ասաց ցորդիսն իլի. Մարգարէ յարուսցէ ձեզ Տ՟ր Ա՟ծ ձեր յեղբարց ձերոց իբրև զիս՝ նմա լուիջիք։ 38 *Սա է՝ որ եղև յեկեղեցւոջն՝ յանապատի ը՟ հրեշտակին, որ խօսեցաւ ընդ նմա 'ի լերինն սինայ՝ և ընդ հարսն մեր. որ ընկալաւ զպատգամս կենդանիս՝ տալ մեզ։ 39 *Որում ոչ կամեցան հնազանդիլ հարքն մեր. այլ մերժեցին, և դարձան սրտիւք իւրեանց յեգիպտոս։ 40 *Եւ ասեն ցահարոն. Արա մեզ աստուածս, որք երթիցեն առաջի մեր. զի մովսէսն այն՝ որ եհան զմեզ յերկրէն եգիպտացւոց՝ ոչ գիտեմք զի՛ եղև նմա։ 41 *Եւ արարին յաւուրսն յայնոսիկ զորթ. և մատուցին զոհս կռոց. և ուրախ լինէին 'ի գործս ձեռաց իւրեանց։ 42 *Դարձոյց Ա՟ծ և մատնեաց զնոսա 'ի պաշտօն զօրութե՟ երկնից. որպէս և գրեալ է 'ի գիրս մարգարէից. Միթէ զոհս և պատարագս մատուցէք ինձ զամս քառասուն յանապատին՝ տունդ իլի։ 43 *Եւ առիք զխորանն մողոքայ. և զաստղն աստուծոյն հռեմփայ. զպատկերսն, զորս արարէք երկիրպագանել նոցա. և փոխեցից զձեզ յայն կողմն բաբիղացւոց։ 44 *Խորանն վկայութե՟ էր ընդ հարսն մեր յանապատին. ո՛րպէս հրաման ետ՝ որ խօսէրն ընդ մովսէսի, առնել զայն ըստ օրինակին՝ զոր ետես։ 45 *Զոր և ընկալեալ բերէին հարքն մեր՝ հանդերձ յեսուիւ 'ի վիճակ ազգացն. զորս մերժեաց Ա՟ծ յերեսաց հարցն մերոց. մինչև յաւուրսն դաւթի։ 46 *Որ եգիտ շնորհս առաջի Ա՟յ. և խնդրեաց գտանել զյարկս Ա՟յ յակոբայ։ 47 *Այլ սողոմոն շինեաց նմա տուն։ 48 *Այլ ոչ եթէ բարձրեալն 'ի ձեռագործ տաճարս բնակէ. այլ որպէս մարգարէն ասէ։ 49 *Երկինք աթոռ իմ են, և երկիր պատուանդան ոտից իմոց. զո՞րպիսի տուն շինեցէք ինձ ասէ Տ՟ր. կամ զի՞նչ տեղի հանգստեան իմոյ։ 50 *Ո՞չ ձեռն իմ արար զայս ամ՟։ 51 *Խստապարանոցք և անթլփատք սրտիւք և ականջօք. դուք հանապազ Հոգւոյն սրբոյ հակառակ կայք. որպէս հարքն ձեր՝ և դուք։ 52 *Զո՞ 'ի մարգարէից ոչ հալածեցին հարքն ձեր. և սպանին զայնոսիկ՝ որք յառաջագոյն պատմեցին վ՟ն գալստեան արդարոյն. որոյ դուք այժմ մատնիչք և սպանողք եղէք։

Lուկ. 7. 8. — 9. 10. — 11. 14. — Բ՟ր. Օր. 18. 15. — Ղուկ. 19. 3. — Ելից. 32. 1. — Ամով. 5. 25. — Ելից. 25. 40. — Յեսու. 3. 14. — 1 Թագ. 16. 13. — Սաղմ. 131. 5. — 3 Թագ. 6. 1. — Գործ. 17. 12. — Եսայ. 66. 1. — Գործ. 17. 24.

53 *Որ առիք զօրէնս 'ի հրամանս հրեշտակաց. և ոչ պահեցիք։ 54 *Եւ լուեալ զայս՝ զայրանային 'ի սիրտս իւրեանց, և կրճտէին զատամունս 'ի վերայ նր՟։



55 *Եւ նա էր լի Հոգւով սրբով. հայեցաւ յերկինս, և ետես զփառս Ա՟յ. և զՅ՟ս զի կայր ընդ աջմէ Ա՟յ. և ասէ՝ ահա տեսանեմ զերկինս բացեալ՝ և զՈրդի մարդոյ զի կայ ընդ աջմէ Ա՟յ։ 56 *Աղաղակեալ 'ի ձայն մեծ՝ խցին զականջս իւրեանց, և դիմեցին առհասարակ 'ի վ՟ր նր՟։ 57 *Եւ հանեալ արտաքոյ քաղաքին՝ քարկոծէին. և վկայքն դնէին զձորձս իւրեանց առ ոտս երիտասարդի միոջ՝ որ կոչիւր սաւուղ։ 58 *Եւ քարկոծ առնէին զստեփաննոս որ կարդայր և ասէր. Տ՟ր Յ՟ս՝ ընկալ զոգի իմ։ 59 *Եդ ծունր՝ և աղաղակեաց 'ի ձայն բարձր. Տէր, մի՛ համարիր դոցա զայս մեղս. և զայս իբրև ասաց՝ ննջեաց. և սօղոս էր կամակից սպանման նորա։

## Գլ. Ը։

1 Եւ եղև յաւուրսն յայնոսիկ հալածումն մեծ 'ի վերայ եկեղեցւոյն յեհմ. և ամենեքեան ցրուեցան 'ի գեօղս հրէաստանի՝ և 'ի սամարիայ՝ բաց յառաքելոցն։ 2 *Եւ բարձին զստեփաննոս արք երկիւղածք՝ և արարին կոծ մեծ 'ի վերայ նորա։ 3 *Բայց սօղոս ճպաակար էր եկեղեցւոյն.

Ը.Գ.

ւոյն․ ՚ի տունս տունս մտանէր․ քարշէր զարս և զկանայս՝ մատնէր ՚ի բանտ ։

4 * Եւ ցրուեալքն շրջէին, և աւետարանէին զբանն ։ 5 * Իսկ փիլիպպոս իջեալ ՚ի քաղաքն սամարացւոց՝ քարոզէր նոցա զՔս ։ 6 * Ունէին դնէին ժողովուրդքն բանիցն փիլիպպոսի միաբան ՚ի լսել նրա՝ և ՚ի տեսանել զնշանսն, զորս առնէր ։ 7 * Վասնզի բազումք՝ որք ունէին զայսս պիղծս՝ աղաղակէին ՚ի ձայն մեծ, և ելանէին ։ * Եւ բազումք 8 անդամալոյծք և կաղք բժշկէին ։

9 * Եւ եղև ուրախութիւն մեծ ՚ի քաղաքին յայնմիկ ։ այր ոմն անուն սիմոն՝ յառաջագոյն էր ՚ի քաղաքին․ մոգ էր, և ապշեցուցանէր զազգն սամարացւոց․ ասել զանձնէ թէ իցէ մեծ ոմն ։ 10 * Յոր հայէին ամենեքին ՚ի փոքուէ մինչև ՚ի մեծամեծս․ և ասէին՝ սա է զօրութիւն Այ՝ որ կոչի մեծ ։ 11 * Հայէին ՚ի նա վասն բազում ժամանակաց մոգութեքն ապշեցուցանելոյ զնոսա ։ 12 * Բայց յորժամ հաւատացին փիլիպպոսի, որ աւետարանէր վասն արքայութեն Այ, և անուանն Յի Քի, մկրտէին ամենեքեան՝ արք և կանայք ։ 13 * Այլ և ինքն սիմոն հաւատաց․ և մկրտեալ կանխէր առ փիլիպպոս ։ տեսեալ զնշանսն և զմեծամեծ զօրութիւնս, որք լինէին՝ զարմանայր ։ 14 * Իբրև լուան, որք յԵրուսաղէմ առաքեալքն էին, թէ և ՚ի սամարիայ ընկալան զբանն Այ, առաքեցին առ նոսա զպետրոս և զյովհաննէս ։ 15 * Որք իջեալք՝ կացին յաղօթս ՚ի վերայ նոցա, որպէս զի առցեն զհոգին սուրբ ։ 16 * Զի ցայնժամ չև ևս էր և ոչ ՚ի վերայ միոյ նոցա հասեալ․ բայց միայն մկրտեալք էին յանուն Տն Յի ։ 17 * Յայնժամ եդին զձեռս ՚ի վրս նոցա՝ և առնուին զհոգի սուրբ ։ 18 * Տեսեալ սիմոնի՝ թէ զձեռն ՚ի վր դնելով առաքելոցն տուեալ լինի հոգին սուրբ, մատոյց նց ինչս՝ և ասէ ։ 19 * Տուք և ինձ զիշխանութիւնս զայս․ զի յոյր վերայ դնիցեմ զձեռս՝ առցէ զհոգի սուրբ․ և պետրոս ասէ ցնա ։ 20 * Արծաթ քո ընդ քեզ լիցի ՚ի կորուստ․ զի զպարգևսն այ համարեցար ընչիւք ստանալ ։ 21 * Ոչ գոյ քեզ մասն և վիճակ ՚ի բանիդ յայդմիկ․ քանզի սիրտ քո ոչ է ուղիղ առաջի այ ։ 22 * Ապաշաւեա դու ՚ի չարեացդ քոց յայդցանէ․ և աղաչեա զՏր․ թերևս թողութիւն լիցի քեզ ՚ի մեղմէ խորհրդոց սրտի քոյ ։ 23 * Վասնզի ՚ի դառնութիւն մաղձի, և ՚ի կնձիռն անիրաւութեն տեսանեմ զքեզ ։ 24 * Պատասխանի ետ սիմոն, և ասէ․ աղաչեցէք դուք վասն իմ զՏր, զի մի ինչ եկեսցէ ՚ի վերայ իմ, յորոց դուքդ ասացէք ։ 25 * Եւ նոցա եդեալ զվկայութիւն խօսեցան զբանն Այ, և դարձան յԵրուսաղէմ, և ՚ի բազում գեօղս սամարացւոցն աւետարանէին ։

26 * Հրեշտակ Տն խօսեցաւ առ փիլիպպոս՝ և ասէ․ արի և գնա դու ՚ի կողմն հարաւոյ՝ ընդ ճանապարհ որ իջանէ յԵրուսաղէմ ՚ի գազայ․ այս է անապատ ։ 27 * Եւ յարեաւ գնաց․ և ահաւասիկ այր մի եթէովպացի, ներքինի, հզօր՝ կանդակայ տիկնոջ եթէովպացւոյ․ որ էր ՚ի վերայ ամենայն գանձուց նորա․ որ եկեալ էր երկիրպագանել յԵրուսաղէմ․ 28 * Եւ էր անդրէն դարձեալ՝ և նստեալ ՚ի կառս իւրում․ ընթեռնոյր զմարգարէ զեսայի ։ 29 * Ասէ հոգին ցփիլիպպոս․ մատիր, և յարեաց ՚ի կառսդ յայդոսիկ ։ 30 * Եւ ընթացաւ փիլիպպոս․ լսէր, զի ընթեռնոյր զեսայի մարգարէ, և ասէ․ գիտիցես արդեօք, զոր ընթեռնուցուսդ ։ 31 * Եւ նա ասէ՝ զիարդ կարիցեմ գիտել՝ թէ ոք ոչ առաջնորդեսցէ ինձ․ և աղաչեաց զփիլիպպոս ելանել նստիլ ընդ նմա ։ 32 * Եւ գլուխ գրոյն՝ զոր ընթեռնոյր՝ էր այս․ ‖ Իբրև զոչխար ՚ի սպանդ վարեցաւ․ և իբրև զորոջ առաջի կտրչի իւրոյ անմռունչ․ այնպէս ոչ բանայ զբերան իւր ։ 33 * ՚Ի խոնարհութեն նր դատաստան նր բարձաւ ։ զազգատոհմն նր ո պատմեսցէ․ զի բառնին յերկրէ կեանք նորա ։ 34 * Պատասխանի ետ ներքինին փիլիպպոսի, և ասէ․ աղաչեմ զքեզ, վն որոյ ասէ մարգարէն զայս․ վասն իւր, եթէ վասն այլոյ ուրուք ։ 35 * Եբաց փիլիպպոս զբերան իւր․ և սկսեալ ՚ի գրոց յայսմանէ՝ աւետարանեաց զՅս ։ 36 * Իբրև երթային զճանապարհայն, եկին ՚ի ջուր ինչ․ և ասէ ներքինին, ահաւասիկ ջուր՝ զինչ արգելու զիս ՚ի մկրտելոյ ։ 37 * Եւ ասէ ցնա փիլիպպոս՝ եթէ հաւատաս բոլորով սրտիւ, մարթ է ։ պատասխանի ետ և ասէ․ հաւատամ եթէ է Յս Քս Որդի Այ ։ 38 * Եւ հրամայեաց կացուցանել զկառսն․ և իջին երկոքեան ՚ի ջուրն, փիլիպպոս և ներքինին՝ և մկրտեաց զնա ։ 39 * Եւ իբրև ելին ՚ի ջրոյ անտի, Հոգին սուրբ եկն ՚ի վր ներքինւոյն․ և հրեշտակ Տն յափշտակեաց զփիլիպպոս․ և ոչ ևս ետես զնա ներքինին․ և գնայր զճանապարհ իւր ուրախութբ ։ 40 * Բայց փիլիպպոս գտաւ յազովտոս․ և շրջեալ աւետարանէր ամենեցուն քաղաքացն մինչև ՚ի գալ նորա ՚ի կեսարիայ ։

Ի․Ե

և վճ ան ածանն

‖ Եսայ․ 53․7․

նմ զՅս

## Գլ: Թ.

Ի.Օ.

Իսկ սօղոս տակաւին լցեալ սպառնալեօք և սպանմամբ աշակերտացն Տն. մատուցեալ առ քահանայապետն: 1
* Խնդրեաց 'ի նմանէ թուղթս 'ի դամասկոս առ ժողովուրդսն. ոք թէ զոք գտցէ զայնր ճանապարհաւ արս կամ կանայս, կապեալս ածցէ յեմ: 2
* Եւ ընդ երթալն նորա եղև մերձենալ 'ի դամասկոս. յանկարծակի շուրջ զնովաւ փայլատակեաց լոյս յերկնից: 3
* Եւ անկեալ յերկիր՝ լուաւ զբարբառ՝ որ ասէր ցնա. սաւուղ սաւուղ. զի՞ հալածես զիս: 4
* Եւ ասէ՝ ո՞վ ես Տր: և նա ասէ. ես եմ Յս, զոր դու հալածես. խիստ է քեզ ընդ դէմ խթանի աքացել: 5
* Եւ զարհուրեալ՝ և անշշունջ լեալ՝ ասաց. Տր, զիս զի՞նչ կամիս առնել: 6
* Եւ ասէ ցնա Տր. այլ յոտն կաց՝ և մուտ 'ի քաղաքդ. և պատմեսցի քեզ՝ զինչ քեզ պարտ իցէ առնել: 7
իսկ արքն, որք ընդ նմայն երթային, կային անշշունջ. զձայնն միայն լսէին՝ բայց տեսանէին և զոչինչ:
* Յարեաւ սօղոս յերկրէ անտի, և աչօք բացօք ոչ զոք տեսանէր. զձեռանէ առեալ նր՝ մուծին 'ի դամասկոս: 8
* Եւ էր անդ աւուրս երիս՝ և ոչ տեսանէր. և ոչ եկեր՝ և ոչ էարբ: 9
* Եւ էր ոմն աշակերտ 'ի դամասկոս՝ անանիա անուն: և ասէ ցնա Տր 'ի տեսլեան, անանիա: և նա ասէ՝ ահաւասիկ եմ Տր: 10
* Եւ ասէ ցնա Տր. յոտն կաց՝ և գնա ընդ փողոցն, որ կոչի ուղիղ. և խնդրեսցես յապարանսն յուդայ՝ սօղոս անուն տարսոնացի՝ զի կայ դեռ յաղօթս: 11
* (Եւ ետես 'ի տեսլեան զայր մի անանիա անուամբ մտեալ և եդեալ 'ի վերայ նորա ձեռս. որպէս զի տեսցէ:) 12
* Պատասխանի ետ անանիա՝ Տէր՝ լուայ 'ի բազմաց վասն առն այնորիկ՝ որչափ արար չարիս սրբոց քոց յեմ: 13
* Եւ աստ ունի զիշխանութի 'ի քահանայապետիցն կապել զամենեսեան, որք կարդան զանուն քո: 14
* Ասէ ցնա Տր, երթ դու՝ զի անօթ ընտրութե է նա ինձ, կրել զանուն իմ առաջի հեթանոսաց՝ և թագաւորաց՝ և որդւոցն Իղի: 15
* Զի ես իսկ ցուցից նմա որչափ պարտ իցէ նմա չարչարիլ վն անուան իմոյ: 16
* Եւ գնաց անանիա՝ և եմուտ յապարանսն. և եդեալ 'ի վերայ նր ձեռս, ասէ. սաւուղ եղբայր՝ 'ի վեր հայեաց՝ Տր առաքեաց զիս. Յս, որ երևեցաւն քեզ 'ի ճանապարհին՝ յորում գայիր. ոք զի տեսցես՝ և լցցիս հոգւով սրբով: 17
18 * Եւ վաղվաղակի անկան յաչաց նր իբրև կեղևանք. ետես՝ և յարեաւ
19 մկրտեցաւ: * Եւ առեալ զկերակուր՝ զօրացաւ. և եղև 'ի դամասկոս աւուրս
20 ինչ ընդ աշակերտսն: * Եւ վաղվաղակի 'ի ժողովուրդսն քարոզեաց զՅն.
21 թէ սա է Որդին Այ: * Զարմացեալ էին ամենեքեան, որք լսէինն, և ասէին. ո՞չ սա էր՝ որ աւար հարկանէր յեմ զայնոսիկ, որք կարդային զանուն Յի. և այսր նմին իրի եկեալ է. զի կապեալս զնոսա տարցի առ քահանայապետսն:
22 * Այլ սօղոս առաւել ևս զօրանայր՝ և յաղթահարէր զհրէայսն՝ որք բնակեալ էին 'ի դամասկոս. և խելամտեցուցանէր թէ սա է Քսն:
23 * Իբրև կատարէին աւուրք բազումք, խորհեցան հրէայքն սպանանել զնա:
24 * Յայտնեցաւ սօղոսի նենգութի նց. քանզի պահէին զդրունսն 'ի տուէ և 'ի գիշերի՝ որպէս զի սպանցեն զնա: [2. Կորն. 11.32.]
25 * Եւ առեալ զնա աշակերտացն 'ի գիշերի՝ ընդ պարիսպն կախեալ իջուցին վանդակաւ:
26 * Իբրև եկն սօղոս յեմ, ընդելանէր յարիլ յաշակերտսն. և ամենեքեան երկնչէին 'ի նմանէ. չհաւատային եթէ իցէ աշակերտ:
27 * Բայց բառնաբաս առեալ զնա՝ էած առ առաքեալսն. և պատմեաց նոցա՝ ոք 'ի ճանապարհին ետես զՏր. և զի խօսեցաւ ընդ նմա. և զի 'ի դամասկոս համարձակեցաւ յանուն Յի:
28 * Եւ էր ընդ նոսա մտանել և ելանել յեմ, համարձակեալ յանուն Տեառն:
29 * Խօսէր, և վիճէր ընդ յոյնսն. և նոքա
30 խոկային սպանանել զնա: * Եւ իմացեալ եղբարցն՝ իջուցին զնա 'ի կեսարիայ. և առաքեցին զնա 'ի տարսոն:
31 * Բայց եկեղեցին ընդ ամենայն հրէաստան † և 'ի գաղիլիեա ունէր զխաղաղութի. շինեալ և երթեալ զհետ երկիւղի Տն. և մխիթարութբ հոգւոյն սրբոյ բազմանայր: [† և 'ի սամարիա]

Ի.Է.

32 * Եւ եղև 'ի շրջելն պետրոսի առ ամենեքումբք, իջանել նմա և առ սրբսն, որք բնակեալ էին 'ի լիւդդեայ:
33 * Եւ եգիտ անդ զայր մի, որում անուն էր ենեա, ութամեան դնիւր 'ի
34 մահիճս անդամալոյծ: * Եւ ասէ ցնա պետրոս. ենեա՝ բժշկէ զքեզ Տր Յս Քս. արի, և քեզէն թօթափեա զանկողինս քո: և վաղվաղակի յարեաւ:
35 * Եւ տեսին զնա ամենեքեան, որք բնակեալ էին 'ի լիւդդեայ և 'ի սարոնայ. որք և դարձան իսկ 'ի Տր:
36 * Եւ 'ի յոպպէ էր կին ոմն աշակերտեալ՝ անուն տաբիթա, որ թարգմանեալ կոչի այծեմնիկ. սա էր լի գործօք

բա-

բարեօք և ողորմութեամբք՝ զորս առնէր։
*Եւ եղև յաւուրսն յայնոսիկ հիւանդ 37
դանալ նմա և մեռանիլ. լուացին զնա
և եդին 'ի դստիկոնի անդ ։ *Եւ մերձ 38
էր լիւդդեա 'ի յոպպէ. աշակերտացն
լուեալ եթէ պետրոս անդ է, առաքե
ցին երկուս արս առ նա՝ աղաչել, զի
մի դանդաղեսցի գալ առ նոսա ։
*Եւ յարուցեալ պետրոս՝ եկն առ նոսա. 39
որ իբրև եկն՝ հանին 'ի վերնատունն.
և կացին շուրջ զնովաւ այրիքն ամ.
լային, և ցուցանէին զձորձս և զհան_
դերձս, որչափ առնէր նոցա այծեմնիկն։
*Եւ հանեալ արտաքս զամենեսեան 40
պետրոսի, եդ ծունր, եկաց յաղօթս.
և դարձաւ 'ի մարմինն և ասէ. տաբի_
թա՝ արի, կաց յանուն Տն ՅԻ ՔԻ.
և նա եբաց զաչս իւր. և տեսեալ զպետ
րոս՝ նստաւ կանգուն ։ *Ձեռն ետ 41
նմա՝ և յարոյց զնա. և կոչեաց զսրբսն,
և զայրիս, առաջի կացոյց զնա կենդա
նի ։ *Եւ յայտնի եղև ընդ ամենայն 42
յոպպէ. և հաւատացին բազումք 'ի
Տր ։ *Եւ եղև աւուրս բազումս լինել 43
նմա 'ի յոպպէ՝ առ ումեմն սիմոնի խա
ղախորդի ։

## Գլ ։ Ժ.

Գկ

Այր մի էր 'ի կեսարիա անուն կոռ 1
նելիոս՝ հարիւրապետ. 'ի գնդէն
որ կոչիւր իտալիկացի ։ *Բարեպաշ 2
տօն՝ և երկիւղած յԱՅ ամ տամբ
իւրով. առնէր ողորմութիւնս բազումս
ժողովրդեանն. և յաղօթս կայր առ
Այ յամ ժամ ։ *Ետես 'ի տեսլեան 3
յայտնապէս զիններորդ ժամու աւուրն
զհրեշտակ ԱՅ՝ զի մտանէր առ նա՝
և ասէր ցնա. կոռնելիէ ։ *Եւ նա 4
հայեցեալ ընդ նա զարհուրեցաւ. և
ասէ՝ զի՞ է Տր ։ ասէ ցնա, աղօթք քո՝
և ողորմութիւնք՝ ելին յիշատակաւ առա
ջի ԱՅ ։ *Եւ արդ յղեա արս 'ի յոպ_ 5
պէ՝ և կոչեա զսիմոն ոմն՝ որ կոչի պետ
րոս ։ *Նա մտեալ է առ սիմոնի ումեմն 6
խաղախորդի, որոյ է տունն մերձ 'ի
ծով ։ *Եւ իբրև գնաց հրեշտակն, 7
որ խօսէր ընդ նմա՝ կոչեաց երկուս 'ի
ծառայից՝ և զինուոր մի բարեպաշ
տօն 'ի սպասաւորացն իւրոց ։ *Եւ 8
պատմեալ նոցա զամ՝ առաքեաց զնս
'ի յոպպէ ։ *Եւ 'ի վաղիւ անդր 'ի ճա 9
նապարհ անկանիլ նոցա՝ և մօտ 'ի քա
ղաքն լինիլ՝ ել պետրոս 'ի տանիսն կալ
յաղօթս զվեցերորդ ժամուն ։
*Քաղցեաւ, և կամէր ճաշակել. և 10
'ի պատրաստելն նոցա՝ եղև 'ի վերայ
նր զարմացումն ։ *Եւ տեսանէր զեր 11
կինս բացեալ. և զչորեցունց տանոց
կապեալ անօթ ինչ իբրև կտաւոյ մե
ծի, իջեալ և նստեալ 'ի վր երկրի։
12 *Յորում էին ամ չորքոտանիք և սո_
ղունք երկրի, և թռչունք երկնից։
13 *Եւ եղև ձայն առ նա. արի պետրէ,
14 զեն, և կեր ։ *Եւ պետրոս ասէ. քաւ
լիցի Տր. զի ոչ երբեք կերի խառնակ
15 ինչ և անսուրբ ։ *Ձայն եղև կրկին
անգամ առ նա. զոր Այ սրբեաց՝
16 դու մի պղծեր ։ *Այս եղև երիցս՝ և
վերացաւ անօթն յերկինս ։
17 *Եւ մինչդեռ զարմացեալ էր ընդ
միտս պետրոս՝ եթէ զինչ իցէ տեսիլն՝
զոր ետես. ահա արքն առաքեալք 'ի
կոռնելեայ՝ հարցին զապարանիցն
սիմոնի, կացին առ դրանն ։
18 *Կոչեցին զոմն՝ և հարցանէին, եթէ
սիմոն՝ որ կոչի պետրոս՝ աստ մտեալ
19 իցէ ։ *Եւ մինչդեռ պետրոս զմտաւ
ածէր վն տեսլեանն՝ ասէ հոգին ցնա.
ահաւասիկ արք ոմանք խնդրեն զքեզ։
20 *Այլ արի, էջ՝ և երթ ընդ նոսա ա_
ռանց իրիք խղճելոյ. զի ես առաքե_
21 ցի զնոսա ։ *Եւ իբրև էջ պետրոս
առ նոսա, ասէ. ահաւասիկ ես եմ, զոր
խնդրէքն. զի՞նչ իրք են՝ վասն որոյ
22 եկիքդ ։ *Եւ նոքա ասեն, կոռնելիոս
հարիւրապետ՝ այր արդար և երկիւ
ղած յԱՅ. վկայեալ յամ ազգէն հրե
ից. զհրաման եառ 'ի հրեշտակէ սրբոյ
կոչել զքեզ 'ի տուն իւր՝ և լսել բանս
23 'ի քէն ։ *Կոչեաց զնս 'ի ներքս՝ և առ
իւր ագոյց. և 'ի վաղիւ անդր յարու_
ցեալ պետրոս՝ գնաց ընդ նս. և ոմանք
յեղբարց անտի՝ որք 'ի յոպպէ էին՝
24 եկին ընդ նմա ։ *Եւ 'ի վաղիւ անդր
մտին 'ի կեսարիա. և կոռնելիոս
մնայր նոցա. կոչեալ զազգատոհմն
իւր՝ և զկարևոր բարեկամսն ։
25 *Եւ եղև 'ի մտանելն պետրոսի, ընդ
առաջ եղև նմա կոռնելիոս. անկեալ
26 առ ոտսն՝ երկրպագանէր ։ *Եւ պետ
րոս կանգնեաց զնա՝ և ասէ. յոտն կաց՝
27 և ես ինքն մարդ եմ ։ *Եւ խօսելով
ընդ նմա եմուտ 'ի ներքս. և գտանէր
28 անդ ժողովեալ բազումս ։ *Եւ ասէ
ցնոսա. դուք ինքնին գիտէք՝ որպէս
անմարթ է առն հրէի հպիլ կամ մեր
ձենալ առ այլազգիս. և ինձ Այ եցոյց
մի զոք խառնակ կամ անսուրբ ասել
29 'ի մարդկանէ ։ *Վն այսորիկ և առանց
ընդ բանս ինչ ածելոյ եկի կոչեցեալ.
բայց արդ հարցանեմ. յինչ պէտս կո
30 չեցիք զիս ։ *Եւ կոռնելիոս ասէ. յա
ռաջ քան զչորս աւուրս մինչ ցայս ժամ,
կայի յաղօթս յիններորդ ժամու 'ի տան իմում.
և. ահա այր մի եկն՝ և եկաց առաջի
իմ 'ի հանդերձս պայծառս. և ասէ ։

Գի

*Կոռ

31 * Կոռնելիէ, լուեալ եղեն աղօթք քո. և ողորմութիւնք քո յիշեցան առաջի Ա՟յ: 32 * Արդ յղեա՛ ՚ի յոպպէ՝ և կոչեա՛ զսիմօն, որ կոչեցեալն է պետրոս. սա մտեալ է ՚ի տուն սիմօնի ուրուեմն խաղախորդի մերձ ՚ի ծով. որ եկեսցէ, և խօսեսցի ընդ քեզ:

33 * Վաղվաղակի ուրեմն առաքեցի առ քեզ: և դու բարւոք արարեր՝ զի եկիր. արդ ամենեքեան մեք առաջի քո կամք լսել զամ, որ հրամայեալ է քեզ ՚ի Տէ:

34 * Եբաց պետրոս զբերան իւր՝ և ասէ. ճշմարտութբ հասեալ եմ. ‖ զի ոչ գոյ ակնառութիւն առ յԱ՟յ: 35 * Այլ յամ ազգս՝ որ երկնչին ՚ի նմանէ, և գործէ զարդարութիւն ընդունելի է նմա:

36 * Զբանն առաքեաց որդւոց իէլի, աւետարանել զխաղաղութիւն ՚ի ձեռն Յի Ք՟ի. (սա է ամի Տր:) 37 * Դուք ինքնին գիտէք զբանն, որ եղև ընդ ամ հրէաստան ‖ սկսեալ ՚ի գալիլեէ յետ մկրտութեն, զոր քարոզեաց Յովհաննէս: 38 * Զյս որ ՚ի նազարեթէ՝ զոր օծ Ա՟ծ հոգւով սրբով և զօրութբ. որ շրջեցաւ բարի առնել՝ և բժշկել զամ ըմբռնեալս ՚ի սատանայէ. զի Ա՟ծ էր ընդ նմա: 39 * Եւ մեք վկայք եմք ամի՝ զոր արար յերկրին հրէաստանի՝ և յեէմ. զոր և սպանին կախեալ զփայտէ: 40 * Զնա Ա՟ծ յարոյց յերրորդ աւուր. և ետ նմա յայտնի լինել. 41 * Ոչ ամենայն ժողովրդեանն՝ այլ մեզ վկայիցս յառաջագոյն ընտրելոց յԱ՟յ. որք և կերաք՝ և արբաք ընդ նմա յետ յարութե նորա ՚ի մեռելոց: 42 * Եւ պատուիրեաց մեզ՝ քարոզել ժողովրդեանն և վկայութիւն դնել՝ թէ նա է սահմանեալն յԱ՟յ դատաւոր կենդանեաց և մեռելոց: 43 * ‖ Նմա ամ մարգարէք վկայեն, զթողութիւն մեղաց առնուլ անուամբ նորա, ամ հաւատացելոց ՚ի նա: 44 * Եւ մինչդեռ խօսէր պետրոս զբանս զայս, հանգեաւ հոգին սբ ՚ի վ՟ր ամենեցուն՝ որք լսէին զբանն:

45 * Զարմացան, որք ՚ի թլփատութէ անտի հաւատացեալք եկեալ էին ընդ պետրոսի. զի և ՚ի հեթանոսս պարգևք հոգւոյն սրբոյ զեղանին: 46 * Քանզի լսէին ՚ի նոցանէ խօսել ՚ի լեզուս՝ և մեծացուցանել զԱ՟ծ: 47 * Յայնժամ պատասխանի ետ պետրոս: միթէ զջուր ոք արգելուլ կարէ՞ առ ՚ի չմկրտել զսոսա. որք և զհոգին սբ ընկալան՝ որպէս և մեք: 48 * Եւ հրամայեաց նոցա մկրտել յանուն Տն Յի Ք՟ի: յայնժամ աղաչեցին զնա լինել անդ աւուրս ինչ:

(Margin: Բ. Օրէ. 10.17. Բ. Մնա. 19.7. Յոբ. 34.19. Իմաստ. 6.8. Սիրաք. 35.15. Հռոմ. 2.11. Գաղա. 2.6. Եփե. 6.9. Կողո. 3.25. Ա. Պետ. 1.17. Ա Պ... 4.14. Երեմ. 31.34. Միքի. 7.18.)

## ԳԼ: ԺԱ:

1 Լուան առաքեալքն՝ և եղբարք, որք էին ՚ի կողմանս հրէաստանի, զի և ՚ի հեթանոսս ընկալան զբանն Ա՟յ: 2 * Բայց յորժամ ել պետրոս յեէմ, խղճէին ՚ի նմանէ՝ որք ՚ի թլփատութե հաւատացեալքն: 3 * Եւ ասէին. եթէ մտեր առ այրս անթլփատս՝ և կերեր ընդ նս: 4 * Եւ սկսաւ պետրոս պատմել նոցա կարգաւ՝ և ասէ:

5 * Ես էի ՚ի քաղաքին յոպպէ յաղօթս՝ և տեսի ՚ի զարմացման տեսիլ: իջանել անօթս ինչ իբրև կտաւոյ մեծի չորեցունց տանոցն կախեալ յերկնից՝ և եհաս մինչև առ իս: 6 * Յոր պշուցեալ հայէի. և տեսի զչորքոտանիս երկրի. և զգազանս՝ և զսողունս. և զթռչունս երկնից: 7 * Եւ լուայ բարբառ, որ ասէր. արի պետրոս, զե՟ն, և կեր: 8 * Եւ ասեմ. քաւ լիցի Տր. զի խառնակ ինչ՝ և անսբ ոչ երբէք եմուտ ՚ի բերան իմ: 9 * Պատասխանի ետ բարբառն երկիցս անգամ յերկնից: զոր Ա՟ծ սրբեաց՝ դու մի խառնակ համարիր:

10 * Այս եղև երիցս. և վերացաւ դարձեալ ամ յերկինս: 11 * Եւ ահա անդրէն երեք արք եկին՝ կացին առ ապարանիցն՝ ուր եսն էի՝ առաքեալք ՚ի կեսարիէ առ իս: 12 * Եւ ասէ ցիս հոգին՝ երթալ ընդ նոսա՝ և մի ինչ խղճել: եկին ընդ իս և սբ վեցեքին եղբարքս. և մտաք ՚ի տուն առնն այնորիկ: 13 * Եւ պատմեաց մեզ՝ ոպ ետես զհրեշտակն ՚ի տան իւրում, զի կայր՝ և ասէր ցնա. առաքեա՛ ՚ի յոպպէ. և կոչեա՛ զսիմօն զկոչեցեալն պետրոս. 14 * Որ խօսեսցի բանս ընդ քեզ. որով կեցցես դու և ամ տուն քո: 15 * Եւ իբրև սկսայ խօսել՝ ‖ եկն հոգին սբ ՚ի վերայ նց: ոպ և ՚ի վ՟ր մեր ՚ի սկզբանն: 16 * Յիշեցի զբանն Տն՝ զոր ասէրն. ‖ յովհաննէս մկրտեաց ՚ի ջուր. բայց դուք մկրտիցիք ՚ի հոգին սբ: 17 * Իսկ արդ՝ եթէ զհաւասարական պարգևն ետ Ա՟ծ և նոցա՝ ոպ և մեզ՝ ՚ի հաւատալն ՚ի Տր Յս Ք՟ս. ես զի՞նչ կարող էի արգելուլ զԱ՟ծ: 18 * Եւ լուեալ զայս լռեցին, և փառաւոր առնէին զԱ՟ծ և ասէին. ուրեմն և ՚ի հեթանոսս ետ Ա՟ծ զապաշխարութիւն կենաց:

19 * Եւ ցրուեալքն ՚ի նեղութենէն ստեփաննոսի՝ հասին մինչև ՚ի փիւնիկէ, և ՚ի կիպրոս՝ և յանտիոքիայ: ոչ ումեք խօսէին զբանն՝ բայց միայն հրէից: 20 * Եւ էին ոմանք արք կիպրացիք՝ որք մտեալք յանտիոք՝ խօսէին ընդ յոյնսն աւետարանեալ զՏր Յս: 21 * Եւ էր ձեռն Տն ընդ նոսա: և բազմութիւն հաւատացելոց

(Margin: Մատ. 3.11. Մարկ. 1.8. Ղուկ. 3.16. Յովհ. 1.26. Գործ. 1.5. Գործ. 19.4.)

ցելոց դարձաւ 'ի Տէր։ * Լուր եղև 22
բանս այս յականջս եկեղեցւոյն՝ որ էր
յԵրուսաղէմ, վասն նց̃։ և առաքեցին զԲառ-
նաբաս մինչև յԱնտիոք։ * Որ իբրև 23
եկն՝ և ետես զշնորհսն Ա̃յ՝ ուրախ ե-
ղև. և մխիթարէր զամենեսին՝ յօժա
րութբ̃ սրտի կալ նոցա 'ի Տր̃։
* Զի էր այր զուարթամիտ՝ և լի Հոգ- 24
ւով սրբով†. և յաւելաւ ժողովուրդ
բազում Տն̃։ * Եւ ել 'ի Տարսոն խնդ- 25
րել զՍօղոս. և գտեալ զնա՝ եած յԱն
տիոք։ * Եւ եղև նց̃ զամն̃ ողջոյն ժո 26
ղովել յեկեղեցին՝ և ուսուցանել զժո
ղովուրդ բազում, և անուանել նախ
յԱնտիոք զաշակերտսն Քրիստոնեայ։
* Ընդ աւուրսն ընդ այնոսիկ իջին 27
յԵրուսաղէմէ մարգարէք յԱնտիոք։
* Յարուցեալ միոմն 'ի նոցանէ Ագա- 28
բոս՝ նշանակեաց Հոգւովն, սով մեծ
լինել ընդ ա̃մ աշխարհ՝ որ եղև առ
Կղօդեաւ։ * Իսկ յաշակերտաց ան- 29
տի, որպ̃ զիարդ կարող ոք էր՝ իւրա-
քանչիւրոք 'ի նոցանէ որոշեցին առա-
քել 'ի պէտս եղբարցն, որք բնակեալ
էին 'ի Հրէաստանի։ * Զոր և արարին 30
իսկ առաքեալ առ երիցունսն 'ի ձեռն
Բառնաբայ՝ և Սօղոսի։

†Եւ հա-
ւատով

## ԳԼ: ԺԲ։

ԳԵ

Ընդ ժամանակսն ը̃ այնոսիկ էարկ 1
Հերովդէս արքայ զձեռն չարչա-
րել զոմանս յեկեղեցւոյն։ * Եւ սպան 2
զՅակոբոս զեղբայրն Յոհաննու, սրով։
* Իբրև ետես եթէ հաճոյ է Հրէիցն, յաւել 3
ևս ունել զՊետրոս։ և էին աւուրքն
բաղարջակերաց։ * Զոր իբրև կալաւ՝ 4
եդ 'ի բանտի։ և մատնեաց չորից չոր-
րորդաց զինուորաց պահել զնա. և կա
մէր յետ զատկին ածել զնա ժողովր
դեանն։ * Եւ Պետրոս 'ի պահեստի 5
էր 'ի բանտին։ և աղօթք ստէպ լինէին
յեկեղեցւոյն վասն նր̃ա առ Ա̃ծ։
* Իբրև կամեցաւ ածել զնա Հերովդէս, 6
'ի գիշերին յայնմիկ էր Պետրոս 'ի քուն
'ի մէջ երկուց զինուորաց. կապեալ
կրկին շղթայիւք։ և պահապանքն
առաջի դրանն պահէին զբանտն։
* Եւ ահա Հրեշտակ Տն̃ եկն և եկաց 7
'ի վերայ՝ և լոյս ծագեաց 'ի տանն։ և
խթեաց զկողմն Պետրոսի՝ յարոյց զնա՝
և ասէ. արի վաղվաղակի։ և անկան
շղթայքն 'ի ձեռաց նորա։ * Եւ ասէ 8
Հրեշտակն ցնա. ած զգօտի քո. և
արկ զհողաթափս յոտս քո։ և արար
այնպէս։ և ասէ ցնա արկ զձորձս քո,
և եկ զկնի իմ։ * Եւ ելեալ երթայր 9
զհետ՝ և ոչ գիտէր եթէ ճշմարիտ իցէ
որինչ եղեն 'ի Հրեշտակէն. զի համա-

ծագե-
ցաւ



10 րէր երազ տեսանել։ * Եւ իբրև ան
ցին նոքա՝ ըստ մի պահ և ըստ երկուս,
եկին մինչև 'ի դուռն երկաթի՝ որ հա
նէր 'ի քաղաքն. որ ինքնին բացաւ նց̃.
և մտեալ անցին ընդ փողոց մի. և վաղ
վաղակի 'ի բաց եկաց 'ի նմանէ Հրեշ
11 տակն։ * Եւ Պետրոս իբրև 'ի միտս
եղև, ասէ. արդ գիտեմ ճշմարտիւ թէ
առաքեաց Տր̃ զՀրեշտակ իւր. և փր-
կեաց զիս 'ի ձեռաց Հերովդէի, և յա̃մ
ակնկալութէ̃ ժողովրդեանն Հրէից։
12 * Եւ լեալ 'ի միտս՝ եկն 'ի տունն Մա-
րիամու մօր Յոհաննու, որ կոչեցաւն
Մարկոս, ուր էին բազումք ժողովեալք՝
13 և աղօթս առնէին։ * Եւ 'ի բախել
զդուրս դրանն, մատեաւ աղախին մի
ուկն դնել, որում անուն էր Հռօդէ։
14 * Եւ ծանուցեալ զձայնն Պետրոսի՝ 'ի
խնդալոյն ոչ եբաց զդուռն. 'ի ներքս
ընթացեալ պատմեաց՝ թէ Պետրոս
15 առ դրանն կայ։ * Նոքա ասեն ցնա՝
մոլիս։ և նա ևս պնդէր՝ թէ այդպէս
է։ և նոքա ասէին՝ Հրեշտակ նր̃ իցէ։
16 * Եւ Պետրոս ստէպ բախէր։ իբրև
բացին՝ տեսին զնա՝ և զարմացան։
17 * Եւ նա ձեռամբ ցուցանէր լռել։ և
պատմեաց՝ որպ̃ Տր̃ եհան զնա 'ի բան-
տէն։ և ասէ՝ պատմեցէք Յակոբայ, և
եղբարցն զայս։ և ել գնաց յայլ տեղի։ և ելեալ
18 * Եւ իբրև այգ եղև՝ էր խռովութի̃ գնաց
մեծ 'ի մէջ զինուորացն զի՞ արդեօք
19 Պետրոսն եղև։ * Իսկ Հերովդէս իբրև
խնդ

խնդրեաց զնա՝ և ոչ եգիտ, հարցեալ զպահապանսն՝ հրամայեաց սպանանել: և իջեալ 'ի Հրէաստանէ 'ի կեսարիա՝ և անդ լինէր: *Եւ էր հերովդէս ցասմամբ ընդ տիւրացիս. և ընդ սիդոնացիս: և նոքա առ հասարակ եկին առ նա: և 'ի բանի արարեալ զբղաստոս սենեկապետ արքային, խնդրէին զխաղաղութին. վասն կերակրելոյ երկրին նոցա յարքունուստ: 20

*Յաւուր միում յերևելում՝ հերովդէս զգեցեալ էր զհանդերձ թագաւորութե՝ և նստէր յատենի, և խօսէր ընդ նոսա հրապարակաւ: 21 *Եւ ամբոխն աղաղակէր՝ թէ Այ բարբառ է, և ոչ մարդոյ: 22 *Եւ անդէն էհար զնա հրեշտակ Տն փոխանակ զի ոչ ետ փառս այ: և եղեալ որդնալից՝ սատակեցաւ: 23 *Եւ բանն այ աճէր և բազմանայր: 24 *Բառնաբաս և սօղոս դարձան յԵմ՝ ‖ իբրև կատարեցին զսպասաւորութիւն առեալ էր ընդ իւրեանս և զյօհաննէս՝ որ կոչեցեալն էր մարկոս: 25

Գ․ Օ․ ‖ Մէր․ 11. 29.

## ԳԼ: ԺԳ:

Էին ոմանք յանտիոք ըստ եկեղեցւոյն մարգարէք, և վարդապետք: բառնաբաս՝ և շմաւօն կոչեցեալն նիգեր. և ղուկիոս կիւրենացի. և մանայէն դայեակորդի հերովդի չորրորդապետի, և սօղոս: 1 *Մինչդեռ 'ի պաշտաման Տն կային, և պահէին, ասէ հոգին սբ. որոշեցէք ինձ զբառնաբաս և զսօղոս 'ի գործ՝ յոր կոչեալ է իմ զդոսա: 2 *Յայնժամ պահեալ՝ և աղօթս արարեալ՝ եդին զձեռն 'ի վերայ նց՝ և արձակեցին: 3 *Եւ նոքա առաքեալք 'ի հոգւոյն սրբոյ՝ իջին 'ի սելևկիա. և անտի նաւեցին 'ի կիպրոս: 4 *Եւ հասեալ 'ի սաղամինայ՝ պատմէին զբանն այ 'ի ժողովուրդս հրէիցն: ունէին և զյօհաննէս պաշտօնեայ: 5 *Շրջեալ ընդ ամ կղզին մինչև 'ի պափոս, գտին անդ զայր ոմն մոգ սուտ մարգարէ՝ հրէայ. որում անուն էր բարեյեսու: 6 *Որ էր ընդ փոխանակդեսպանին սերգեայ պօղոսի՝ առն իմաստնոյ: նա աղաչեալ զբառնաբաս, և զսօղոս, խնդրէր լսել զբանն այ: 7 *Ընդդէմ եկաց նոցա եղիմաս մոգ: (քանզի այնպէս թարգմանի անուն նր:) խնդրէր շրջել զփոխանակդեսպանն 'ի հաւատոց: 8 *Իսկ սօղոս, որ և պօղոսն լցեալ հոգւով սրբով՝ հայեցաւ 'ի նա: 9 *Եւ ասէ՝ ով լի ամ նենգութբ՝ և խորամանկութեամբ, որդի սատանայի, թշնամի ամ արդարութե. ոչ լռես 'ի թիւրելոյ զճանապարհս Տն զուղիղս: 10

11 *Եւ արդ՝ ահա ձեռն Տն 'ի վերայ քո. և դու եղիցիս կոյր չտեսանել զարև մինչև 'ի ժամանակ մի: և անդէն անկաւ 'ի վերայ նորա մէգ և խաւար: և շրջեալ խնդրէր առաջնորդս: 12 *Յայն ժամ տեսեալ փոխանակդեսպանին զիրսն՝ որք եղեն, հաւատաց զարմացեալ ընդ վարդապետութին Տն:

13 *Եւ ամբարձեալ 'ի պափէ պօղոսեանց՝ եկին 'ի պերգէ պամփիւղեայ: յօհաննէս մեկնեալ 'ի նոցանէ դարձաւ յԵմ: 14 *Եւ նոքա գնացեալ 'ի պերգեայ՝ եկին յանտիոք պիսիդեայ: և մտեալ 'ի ժողովուրդն յաւուր շաբաթուց՝ նստան: 15 *Եւ յետ ընթեռնլոյ զօրէնսն և զմարգարէս, առաքեցին առ նոսա ժողովրդապետքն՝ և ասեն: արք եղբարք՝ եթէ իցէն 'ի ձեզ բանք մխիթարութե առ ժողովուրդդ՝ խօսեցարուք: 16 *Յոտնեկաց պօղոս՝ շարժեաց զձեռն և ասէ. արք իսրայէլացիք՝ և որք երկնչիք յԱյ՝ լուարուք: 17 *Այծ ժողովրդեանս այսորիկ իլի, ընտրեաց զհարսն մեր: և զժողովուրդն բարձրացոյց 'ի պանդխտութե ‖ յերկրին եգիպտացւոց: ‖ և 'ի բազուկ բարձր եհան զնս անտի: 18 *‖ Եւ իբրև քառասնամեայ ժամանակ կերակրեաց զնս յանապատի: 19 *Եւ քակեալ զազգս եօթն յերկրին քանանու՝ ‖ ժառանգեցոյց նոցա զերկիր նց: 20 *Իբրև ամս չորեք հարիւր և յիսուն: ‖ և յետ այսորիկ ետ նց դատաւորս մինչև 'ի սամուէլ մարգարէ: 21 *Եւ անտի յառաջ ‖ խնդրեցին զթագաւոր: և ետ նց Այծ զսաւուղ որդի կիսեայ. այր յազգէ բենիամենի՝ ամս քառասուն: 22 *Եւ իբրև փոխեաց զնա, ‖ յարոյց նոցա զդաւիթ թագաւոր՝ որում և ասացաւ վկայութբ. ‖ գտի զդաւիթ որդի յեսսեայ այր ըստ սրտի իմում. որ արասցէ զամ զկամս իմ: 23 *‖ Ի սորա զաւակէ Այծ ըստ աւետեացն յարոյց իլի զփրկիչն Յն: 24 *Նախ յառաջագոյն ‖ քարոզութեն յօհաննու. առաջի երեսաց մտին նր մկրտութի ապաշխարութե՝ ամ ժողովրդեանն իլի: 25 *Եւ իբրև լնոյր յօհաննէս զընթացսն, ասէր: զո ոք կարծէք զինէն թէ իցեմ, ‖ չեմ ես այն. այլ ահա գայ զկնի իմ, որում չեմ արժանի զկօշիկս ոտիցն լուծանել: 26 *Արք եղբարք՝ որդիք աբրահամեան ազգին, և որք 'ի ձեզ երկիւղածք իցեն յԱյ: ձեզ բանս այս փրկութի առաքեցաւ: 27 *Զի որք բնակեալք էին յԵմ, և իշխանք նց անծանօթք եղեն 'ի սմանէ՝ և ըստ բարբառոց մարգարէիցն. որք զամ շաբաթս ընթերցեալ լինէին՝ դատեալ

Գ․ Լ․ ‖ Ելից 1. 1. ‖ Ելից 13. 21. 22. ‖ Ելից 16. 3. ‖ Յեսու 14. 2. ‖ Դատ 3. 9. ‖ Ա Թագ 8. 5. և 9. 16. և 10. 1. ‖ Ա Թագ 13. 14. և 16. 13. ‖ Սաղմ 88. 21. ‖ Եսայ 11. 1. ‖ Մատ 3. 1. Մարկ 1. 4. ‖ Ղուկ 3. 3. ‖ Մատթ 3. 11. Մարկ 1. 7. Յովհ 1. 27.

տեալ կատարեցին : *Եւ ոչ մի ինչ 28
պատճառս մահու գտեալ՝ ‖ խնդրեցին
'ի պիղատոսէ սպանանել զնա : *Եւ 29
իբրեւ կատարեցին զամ, որ վասն նր
գրեալ էր, իջուցեալ 'ի փայտէն, եդին
'ի գերեզմանի : * ‖ Այլ Ած յարոյց 30
զնա 'ի մեռելոց : որ երեւեցաւ աւուրբք
բազմօք այնոցիկ : *Որք ելեալ էին ընդ 31
նմա 'ի գալիլեէ յերուսաղէմ : որք եւ արդ
իսկ վկայք են նր առ ժողովուրդն :
*Եւ մեք ձեզ աւետարանեմք զխոս_ 32
տումն՝ որ առ հարսն եղեալ էր :
*Զի զնոյն Ած կատարեաց առ մեզ 33
որդիս նց յարուցեալ զՅս : որպէս եւ
'ի սաղմոսին գրեալ է յերկրորդում : ‖
Որդի իմ ես դու . եւ ես այսօր ծնայ
զքեզ : *Եւ զի յարոյց զնա 'ի մեռե_ 34
լոց . եւ ոչ եւս դառնալոց է յապակա_
նութիւն : *Այսպէս ասէ . ‖ Եթէ տաց 35
ձեզ զորբութիւն դաւթի զհաւատա
րիմս : քանզի եւ 'ի միւսումն ասէ : ‖ Ոչ
տացես սրբոյ քում տեսանել զապա_
կանութիւն : *Այլ դաւիթ յազգի անդ 36
իւրում պաշտեաց . եւ 'ի կամս Այ ‖
ննջեաց . եւ յաւելաւ առ հարս իւր՝ եւ
ետես զապականութիւն : * Բայց՝ զոր 37
Ած յարոյց՝ ոչ ետես զապականութիւն :
*Յայտնի լիցի ձեզ արք եղբարք . զի 38
սովաւ ձեզ թողութիւն մեղաց աւե_
տարանի : եւ յամենայն յորմէ ոչ կարացէք
օրինօքն մովսէսի արդարանալ : *Սո_ 39
վաւ ամ, որ հաւատայ, արդարանայ :
*Զգոյշ կացէք՝ գուցէ եկեսցէ 'ի վր 40
ձեր ասացեալն 'ի մարգարէսն :
*‖ Տեսէք արհամարհոտք՝ եւ զարմա_ 41
ցարուք՝ եւ եղծարուք : զի գործ մի գոր
ծեմ ես յաւուրս ձեր . գործ, որում ոչ
հաւատայցէք՝ թէ ոք պատմեսցէ ձեզ :
*Եւ իբրեւ ելին անտի՝ աղաչէին 'ի 42
միւսում շաբաթու խօսել նոցա զնոյն
բանս : *Իբրեւ արձակեցաւ ժողո_ 43
վուրդն, զհետ երթային բազումք 'ի
հրէից անտի՝ եւ 'ի պաշտօնէից եկա_
մտից պօղոսի եւ բառնաբայ . որք խօ_
սէին ընդ նոսա . եւ հաւանեցուցանէին
զնոսա կալ՝ մնալ 'ի շնորհսն Այ :
*Եւ 'ի գալ միւսոյ շաբաթուն, գրե_ 44
թէ ամ քաղաքն ժողովեցաւ լսել զբ
բանն Այ : *Իբրեւ տեսին հրէայքն 45
զամբոխն՝ լցան նախանձու : եւ ընդ_
դէմ դարձեալ ասացելոցն 'ի պօղոսէ՝
հայհոյէին : *Համարձակեալ պօղոս 46
եւ բառնաբայ՝ ասէին : առ ձեզ նախ
պարտ էր խօսել զբանն Այ : եւ քանզի
դուք մերժէք զնա, եւ ոչ արժանիս
համարիք զձեզ կենացն յաւիտենակա
նաց, ահաւասիկ դառնամք 'ի հեթա
նոսս : *Զի այսպէս պատուիրեաց 47
ձԼէ

‖ Մատթ. 27. 20. Ղուկ. 23. Մարկ. 15.13. Ղուկ. 23.21. Ղուկ. 23. Յոհան. 19. 15. ‖ Մատթ. 28. Մարկ. 16. Ղուկ. 24. Յոհ. 20. ‖ Սաղմ. 2. 7. ‖ Եսայ. 55.3. ‖ Սաղմ. 15.10. ‖ 3 Թագ. 2. 10. ‖ Ամբակ. 1. 5.

Գ Կ

մեզ Տր : ‖ Եդի զքեզ 'ի լոյս հեթանո_
սաց՝ լինիլ քեզ 'ի փրկութիւն մինչեւ 'ի
48 ծագս երկրի : * Զայս լուեալ հե_
թանոսացն՝ ուրախ լինէին, եւ փառաւ
որ առնէին զբանն Տն : եւ հաւատա_
ցին՝ որք էին կարգեալ 'ի կեանսն յաւի
49 տենականս : *Եւ շրջէր բանն Այ
50 ընդ ամ գաւառն : *Բայց հրէայքն
գրգռեցին զպաշտօնեայ կանայս զըզ
գաստս . եւ զգլխաւորս քաղաքին . եւ
յարուցեալ հալածանս 'ի վր պօղոսի
եւ բառնաբայ՝ հանին զնոսա 'ի սահմա
51 նացն իւրեանց : *‖ Եւ նք թօթափեալ
զփոշին յոտից 'ի վր նոցա, եկին յիկո
52 նիոն : *Եւ աշակերտքն լնանէին խն
դութբ՝ եւ հոգւով սրբով :

‖ Եսայ. 49.6. ‖ Մատթ. 10. 14. Մարկ. 6. 11. Ղուկ. 9. 5.

## ԳԼ: ԺԴ:

1 Եւ եղեւ յիկոնիոն 'ի միասին մտա
նել նոցա 'ի ժողովուրդ հրէիցն,
եւ խօսել նոյնպէս . մինչեւ հաւատալ
հրէից, եւ յունաց բազմաց յոյժ :
2 *Բայց անհաւան հրէայքն յարուցին՝
եւ չարացուցին զանձինս հեթանոսացն
3 'ի վերայ եղբարց : *Բազում ժամա_
նակս շրջէին համարձակեալք Տեառն
վկայութբ՝ բանիւ շնորհացն իւրոյ .
եւ տալ նշանս եւ արուեստս լինելոյ 'ի
4 ձեռս նոցա : *Եւ եղեն հերձուածք
'ի բազմութեն քաղաքին . ոմանք էին
'ի հրէայսն, եւ ոմանք յառաքեալսն :
5 *Իբրեւ եղեւ դիմել հեթանոսացն եւ
հրէից իշխանօքն իւրեանց 'ի թշնամա
6 նել եւ 'ի քարկոծել զնս : *Ազդ եղեալ
նց՝ փախեան 'ի քաղաքս լիկայոնացւոց
'ի լիւստրայ՝ եւ 'ի դերբէ . եւ շուրջ ըզ
գաւառաւն . եւ անդ աւետարանէին :
7 *Եւ այր մի լիւստրացի տկար յոտից՝
նստէր՝ կաղ յորովայնէ մօր իւրոյ . որոյ
8 երբէք չէր գնացեալ : * Սա լուաւ
զխօսսն պօղոսի . որ հայեցեալ 'ի նա,
եւ տեսեալ թէ ունի հաւատս փրկու_
9 թեն : *Ասէ մեծաձայն . քեզ ասեմ,
յանուն Տն մերոյ Յի Քի յոտն կաց
'ի վերայ ոտից քոց ուղիղ : եւ վաղվա_
10 զէր՝ եւ գնայր : *Եւ ժողովրդոցն տե_
սեալ՝ զոր արար պօղոս, բարձին զձայնս
իւրեանց լիկայոնարէն եւ ասեն . աս_
տուածք նմանեալք մարդկան իջին
11 առ մեզ : *Եւ կոչէին զբառնաբաս
դիոս . եւ զպօղոս հերմէս . քանզի նա
12 էր առաջնորդ բանին : *Իսկ քուրմն
դիայ՝ որ կայր առաջի քաղաքին, ցուլս՝
եւ պսակս հասուցեալ 'ի դուռն, հան
դերձ բազմութեքն կամէր զոհել :
13 *Եւ լուեալ առաքելոցն բառնաբայ
եւ պօղոսի՝ պատառեալ զհանդերձս
իւրեանց՝ արտաքս վազեցին յամբո_
Sſſſſſ  խէն,

Գ Բ

Խօշէմ. որ է լոռան_ Բագ. մեր հարբուած որ է հայ լածու

խէն, աղաղակէին. 14 *Եւ ասէին. արք՝ զի՞նչ գործէք զայդ. մեք ձեզ նմանօղք կարեօք մարդիկք եմք. աւետարանել ձեզ յայդպիսի ունայնութեց դառնալ յԱծ կենդանի. որ արար զերկինս և զերկիր՝ և զծով՝ և զամ որ 'ի նոսա. 15 *Որ յանցեալ ազգսն, թոյլ ետ ամ հեթանոսաց գնալ 'ի ճանապարհս իւրեանց. 16 *Եւ սակայն ոչ ետ թէ առանց վկայութե զինքն եթող, բարերարութբն տալ յերկնից ձեզ զանձրևս, և ժամանակս պտղաբերս. լնուլ կերակրօք և ուրախութբ զսիրտս ձեր. 17 *Եւ զայս ասացեալ՝ հազի՛ւ լռեցուցանէին զժողովուրդն 'ի զոհելոյ նց. այլ գնալ յիւրաքանչիւր տեղիս. 18 *Եւ 'ի շրջիլ նց և յուսուցանել՝ եկին հասին յանտիոքէ, և յիկոնիոնէ հրէայք. և 'ի վիճելն նց համարձակութբ՝ պատրեցին զժողովն 'ի բաց կալ 'ի նոցանէ. և ասէին թէ ոչինչ ճշմարտութի ասեն, այլ զամ ստեն. և քարկոծեալ զպօղոս՝ քարշեցին արտաքս քան զքաղաքն՝ և համարէին զնա մեռեալ. 19 *Եւ 'ի պատել զնովաւ աշակերտացն՝ յարեաւ և եմուտ 'ի քաղաքն. և 'ի վաղիւ անդր ել բառնաբաւ հանդերձ 'ի դերբէ. 20 *Աւետարանել 'ի քաղաքին յայնմիկ՝ և աշակերտեալ զբազումս, դարձան 'ի լիւստրայ՝ և յիկոնիոն՝ և յանտիոքիայ. 21 *Հաստատել զանձինս աշակերտելոց՝ և մխիթարել կալ հաստատուն 'ի հաւատսն. և թէ բազում նեղութբք պարտ է մեզ մտանել յարքայութի այ. 22 *Ձեռնադրեցին նոցա ըստ եկեղեցւոյ երիցունս. աղօթս արարեալ հանդերձ պահօք՝ յանձն արարին զնոսա Տն. յոր հաւատացեալն էին. 23 *Եւ շրջեալ ընդ պիսիդեայ՝ եկին 'ի պամփիլիայ. 24 *Եւ խօսեցեալ 'ի պերգէ զբանն Տն, իջին յատալիայ. 25 *Եւ անտի նաւարկեալք՝ գնացին յանտիոք, ուստի էին յանձնարարեալ շնորհացն այ՝ 'ի գործն զոր կատարեցին. 26 *Եկեալ և ժողովեալ զեկեղեցին պատմեցին՝ որչափ արար Ած ընդ նս. և զի եբաց հեթանոսաց զդուռն հաւատոց. 27 *Շրջէին ժամանակս ոչ սակաւս ընդ աշակերտսն.

Ծննդ. 1. 1. Սաղմ. 145. 6. Յայտ. 14. 7. Վայր. 17. 24. Վեր. 13. 1.

## ԳԼ. ԺԵ.

Գ. Գ.

1 Եւ ոմանք իջեալք 'ի հրէաստանէ՝ ուսուցանէին զեղբարս. թէ ոչ թլփատիք ըստ օրինացն մովսէսի՝ ոչ կարէք ապրիլ. 2 *Եւ 'ի լինիլ ոչ սակաւ հակառակութե և խնդրոյ՝ պօղոսի և բառնաբայ՝ ընդ նոսա, եդին ելանել պօղոսի և բառնաբայ, և ոմանց 'ի նոցանէ առ առաքեալս և երիցունս յէրեմ վասն խնդրոյն այնորիկ. 3 *Նոքա յուղարկեալք յեկեղեցւոյն, շրջեցան ըն փիւնիկէ, և ընդ սամարիայ պատմեցին զդարձն հեթանոսաց. և առնէին ուրախութի մեծ ամ եղբարցն. 4 *Եւ հասեալք յէրեմ, ընկալեալք յեկեղեցւոյն՝ և յառաքելոցն՝ և յերիցանց, պատմեցին որչափ ինչ արար ընդ նոսա Ած. 5 *Յարեան ոմանք 'ի հերձուածոյն փարիսեցւոց հաւատացեալք. և ասեն, թէ պարտ է թլփատել զդոսա. և պատուիրել պահել զօրէնսն մովսէսի. 6 *Եւ ժողովեցան առաքեալքն և երիցունք տեսանել վասն բանիս այսորիկ. 7 *Եւ յետ բազում խնդիր լինելոյ՝ յոտն եկաց պետրոս՝ և ասէ ցնոսա. արք եղբարք՝ դուք ինքնին գիտէք՝ զի յաւուրցն առաջնոց 'ի միջի ձերում ընտրեաց Ած բերանով իմով լսել հեթանոսաց բանին աւետարանի, և հաւատալ. 8 *Եւ սրտագէտն Ած վկայեաց նոցա. տալով նոցա զհոգին սուրբ՝ 9 որպէս և մեզ. *Եւ ոչինչ ընտրութի արար 'ի մէջ նոցա և մեր՝ հաւատովքն 10 սրբեալ զսիրտս նց. *Արդ ընդէ՞ր փորձէք զԱծ. դնել լուծ 'ի վերայ պարանոցի աշակերտացն, զոր ոչ հարքն մեր՝ և ոչ մեք կարացաք բառնալ. 11 *Այլ շնորհօք Տն Յի Քի հաւատամք ապրիլ, զորօրինակ և նոքա. 12 *Լռեաց ամ ժողովուրդն, և լսէին բառնաբայ և պօղոսի պատմելոյն. որչափ արար Ած նշանս և արուեստս 13 'ի հեթանոսս, 'ի ձեռն նց. *Եւ յետ լռելոյն նոցա՝ պատասխանի ետ յակոբոս՝ և ասէ. արք եղբարք՝ լուարո՛ւք 14 ինձ. *Շմաւոն պատմեաց՝ ոնց յառաջագոյն Ած այց արար առնուլ զժողովուրդ 'ի հեթանոսաց անուան իւր 15 ոյ. *Եւ այնմ միաբանին բանք մարգարէիցն. որպէս և գրեալ է. 16 *Յետ այսորիկ դարձայց՝ և շինեցից զյարկսն դաւթի զանկեալս. և զկործանեալսն նորա վերստին շինեցից՝ և 17 կանգնեցից զնա. *Որպէս զի խնդրեսցեն մնացորդք մարդկան զՏր. և ամ հեթանոսք՝ յորոց վերայ կոչեցեալ է անուն իմ, ասէ Տր, որ առնէ զայս ամէ. 18 *Յայտնի 'ի յաւիտենանցն է Տն գործ 19 իւր. *Վասն որոյ և ես իրաւունս համարիմ՝ մի՛ նեղել զայնոսիկ՝ ոյք 'ի հեթանոսացն դառնան առ Ած. 20 *Այլ տալ թուղթ առ նոսա. խորշիլ 'ի կերակրոց կռոց՝ և 'ի պոռնկութէ 21 և 'ի մեռելոտւոյ՝ և յարենէ. *Զի մովսէս յազգացն առաջնոց ըստ քաղաքաց զքարոզիչսն իւր ունի 'ի ժողովուրդս

ըստ

Գաղ. 5. 2. Վեր. 10. 20. Վեր. 10. 45. Ամով. 9. 11.

ըստ ամենայն շաբաթուց ընթերցեալ:
*Յայնժամ հաճոյ թուեցաւ առաքելոցն եւ երիցանցն ամ՟ եկեղեցեաւն. արս ընտրեալս 'ի նոցանէ առաքել յանտիոք ընդ պօղոսի եւ ընդ բառնաբայ. զյուդայ զկոչեցեալն բարսաբայ՝ եւ զշիղայ՝ արս գլխաւորս: 22 *Գրել առ եղբարս 'ի ձեռն ն՟յ զայս ինչ: Առաքեալք՝ եւ երիցունք եղբարք՝ յանտիոք՝ եւ 'ի սիւրիայ՝ եւ 'ի կիղիկիայ եղբարցդ՝ որք 'ի հեթանոսաց էք՝ ողջոյն: 23
*Քանզի լուաք՝ թէ ոմանք իբրեւ 'ի մէնջ խռովեցուցին զձեզ. բանիւք խախտել զանձինս ձեր՝ ասեն թլփատիլ եւ պահել զօրէնսն՝ որոց ոչ հրամայեցաք: 24 *Հաճոյ թուեցաւ մեզ միաբան ժողովելոցս, արս ընտրեալս յղել առ ձեզ ընդ սիրելիս մեր՝ ընդ բառնաբայ եւ ընդ պօղոսի: 25 *Արք՝ որք մատնեցին զանձինս իւրեանց վասն անուան Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի: 26 *Արդ առաքեցաք զյուդայ եւ զշիղայ. եւ ն՟յ 'ի բանից զնոյն պատմել: 27 *Զի հաճոյ թուեցաւ հոգւոյն սրբոյ՝ եւ մեզ. մի ինչ աւելի բեռն դնել ձեզ: 28 *Բայց միայն 'ի կարեւորացս յայսցանէ 'ի բաց կալ. 'ի զոհելոյ կռոց՝ եւ յարենէ՝ եւ 'ի հեղձուցելոյ՝ եւ 'ի պոռնկութենէ. յորոց պահեալ զանձինս բարւոք գործէք. ողջ լերուք: 29

յայսցանէ

*Եւ նոքա արձակեալք իջին յանտիոք. եւ ժողովեալ զժողովուրդսն, ետուն զթուղթն: 30 *Եւ ընթերցեալ ուրախ եղեն 'ի վ՟ր մխիթարութեան: 31
*Յուդա եւ շիղա՝ զի եւ նոքա մարգարէք էին՝ բանիւք բազմօք մխիթարեցին զեղբարս՝ եւ հաստատեցին: 32 *Եւ եղեալ անդ ժամանակս ինչ՝ արձակեցան խաղաղութ՟բ յեղբարց առ առաքեալսն: 33 *Եւ հաճոյ թուեցաւ շիղայի մնալ անդէն. իսկ յուդաս միայն գնաց յէ՟մ: 34 *Բայց պօղոս եւ բառնաբաս շրջէին յանտիոք ուսուցանել եւ աւետարանել՝ եւ այլովք բազմօք՝ զբանն Տ՟ն: 35
*Իսկ յետ աւուրց ասէ պօղոս ցբառնաբաս. դարձցուք, եւ շրջիցուք զեղբարբք՝ ըստ ամ՟ քաղաքաց՝ յորս քարոզեցաք զբանն Տ՟ն՝ թէ ո՞րպ ունիցին: 36
*Բառնաբաս կամէր առնուլ եւ զյօհաննէս զկոչեցեալն մարկոս: 37 *Բայց պօղոս աղաչէր՝ (թէ զմեկնեալն 'ի նոցանէ 'ի պամփիլիայ. եւ չեկեալն ընդ նոսա 'ի գործն) մի առնուլ ընդ ինքեանս: 38 *Եւ եղեւ գժտութ՟ի մինչեւ մեկնել նոցա 'ի միմեանց. բառնաբայ առնուլ զմարկոս՝ նաւել 'ի կիպրոս: 39

ԳԻ

*Եւ պօղոսի ընտրեալ զշիղայ՝ ել, յանձն արարեալ շնորհացն Ա՟ծ յեղ- 40
41 բարց անտի: *Եւ շրջէր 'ի կողմանս ասորւոց, եւ կիղիկեցւոց՝ հաստատէր զեկեղեցիսն. պատուիրելով պահել զպատուիրանս առաքելոցն, եւ երիցանցն:

## ԳԼ. ԺԶ.

1 Եւ եկն եհաս 'ի դերբէ եւ 'ի լիւստրայ. եւ ահա աշակերտ մի էր անդ՝ անուն Տիմոթէոս՝ որդի կնոջ հրէի հաւատացելոյ, եւ հօր հեթանոսի: 2 *Որ վկայեալ էր 'ի լիւստրացւոց եւ յիկոնացւոց եղբարց: 3 *Զսա կամեցաւ պօղոս ընդ իւր տանել. եւ առեալ թլփատեաց զնա վ՟ն հրէիցն, որք էին 'ի տեղիսն յայնոսիկ. քանզի գիտէին ամենեքին զհայր ն՟ր թէ հեթանոս էր: 4 *Իբրեւ անցանէին ը՟ն քաղաքսն՝ աւանդեցին ն՟յ պահել զհրամանսն պատուիրեալս յառաքելոցն եւ յերիցանցն՝ որք յէ՟մ: 5 *Եւ եկեղեցիքն հաստատէին 'ի հաւատս. եւ յաւելանային 'ի թիւն հանապազօր:

ԳԼ

6 *Եւ շրջեցան ընդ փռիւգիոյ. եւ ընդ կողմանս գաղատացւոց. արգելեալք 'ի հոգւոյն սրբոյ խօսիլ զբանն յասիայ: 7 *Բայց եկեալ առ միւսեաւ՝ թեւակոխէին երթալ 'ի բիւթանիայ՝ եւ ոչ համարձակեաց ն՟յ հոգին Յ՟ի: 8 *Եւ անցեալ ըստ միւսայ՝ իջին 'ի տրովադա: 9 *Եւ տեսիլ երեւեցաւ 'ի գիշերի պօղոսի. այր մի մակեդոնացի կայր, աղաչէր զնա՝ եւ ասէր. անցեալ 'ի մակեդոնիա՝ օգնեսցես մեզ: 10 *Եւ իբրեւ զտեսիլն ետես, վաղվաղակի խնդրեցաք ելանել 'ի մակեդոնիա. տեղեկացեալք թէ հրաւիրեաց զմեզ Տ՟ր աւետարանել նոցա: 11 *Եւ ելեալ 'ի տրովադայ՝ դէպ ուղիղ գնացաք 'ի սամոթրակէ. եւ 'ի վաղիւ անդր 'ի նոր քաղաք: 12 *Եւ անտի 'ի փիլիպպոս. որ է առաջին վիճակ՝ մակեդոնացւոց քաղաք՝ կողոնիայ: Եւ անդ 'ի քաղաքին դադարեալ մեր աւուրս ինչ: 13 *Յաւուրն շաբաթու ելաք արտաքոյ քաղաքին առ գետափն՝ ուր համարէր աղօթս մատուցանել. եւ նստեալ խօսէաք ընդ ժողովեալ կանայսն: 14 *Եւ կին մի անուն լիդիա ծիրանեվաճառ՝ 'ի թիւատիր քաղաքէ՝ երկիւղած յԱ՟Ծ՝ լուաւ. զորոյ Տ՟ր իսկ եբաց զսիրտ անսալ խօսիցն պօղոսի: 15 *Եւ իբրեւ մկրտեցաւ ինքն եւ տուն իւր. աղաչէր, եւ ասէր՝ եթէ համարիցիք զիս հաւատացեալ Տ՟ն մտեալ 'ի տուն իմ ագերուք: եւ բռնադատեաց տարաւ զմեզ: 16 *Եւ եղեւ մինչ երթայաք մեք յաղօթս, պատահեցաւ մեզ աղախին մի՝ որ ունէր

զայս հարցուկ. որ շահս բազումս տայր տերանց իւրոց մոլեգնմն: 17 *Նա զհետ եղեալ պօղոսի և մեր՝ աղաղակէր՝ և ասէր. արքս այսոքիկ՝ ծառայք Ա.Յ բարձրելոյ են. որք պատմեն ձեզ զՃա՛նապարհս փրկութե: 18 *Եւ զայս առնէր 'ի բազում աւուրս. զայրացեալ պօղոս՝ դարձաւ և ասէ ոգւոյն. պատուիրեմ քեզ յանուն Յի Քի ելանել 'ի դմանէ: Եւ ել 'ի նմին ժամու:

19 *Իբրև տեսին տեարք նր՝ եթէ հատաւ յոյս շահին նր, առեալ զպօղոս և զշիղայ՝ ձգեցին 'ի հրապարակս առ իշխանսն: 20 *Եւ ածեալ զնս առ զօրագլուխսն՝ ասէին. արքս այսոքիկ խռովեցուցանեն զքաղաքս մեր. ինքեանք հրէայք են: 21 *Եւ պատմեն մեզ օրէնս, զոր չէ՛ արժան մեզ ընդունել՝ և ո՛չ առնել. զի հռոմայեցիք եմք:

22 *Եւ ընթացաւ ժողովուրդն ընդդէմ նոցա. և զօրագլուխքն պատառեցին զհանդերձս իւրեանց. || հրամայէին գան հարկանել: 23 *Եւ բազում վէրս եդեալ 'ի վերայ նոցա՝ արկին 'ի բանտ. պատուիրեցին բանտապետին զգուշութբ պահել զնոսա: 24 *Որոյ առեալ զայս պատուէր՝ էարկ զնս 'ի ներքին բանտն. և զոտս նոցա պնդեաց 'ի կոճեղս: 25 *Եւ 'ի մէջ գիշերոյն պօղոս և շիղա կային յաղօթս՝ և օրհնէին զԱ.Ծ՝ և ունկն դնէին նոցա կալանաւորքն:

26 *Եւ յանկարծակի շարժումն մեծ՝ մինչև 'ի շարժիլ հիմանց բանտին. և բացան անդէն դրունքն ամ. և ամենեցուն կապանք լուծան: 27 *Իբրև զարթեաւ բանտապետն՝ և ետես բացեալ զդրունս բանտին, ձգեաց զսուսեր՝ և կամէր երթալ զիւրովին. կարծէր փախուցեալ զկապեալսն: 28 *Եւ գոչեաց 'ի ձայն մեծ պօղոս՝ և ասէ. մի՛ ինչ գործեր ընդ անձն քո չար. քանզի ամենեքին աստ եմք: 29 *Խնդրեաց լոյս՝ և դիմեաց 'ի ներքս. և զահի հարեալ անկաւ առաջի պօղոսի և շիղայի:

30 *Եւ ածեալ զնոսա արտաքս՝ ասէ. տեարք՝ զի՞նչ պարտ է ինձ առնել՝ զի ապրեցայց: 31 *Եւ նոքա ասեն, հաւատա՛ 'ի Տր Յս Քս, և ապրեսցիս դու՝ և ամ տուն քո: 32 *Եւ խօսեցան նմա զբանն Տն և ամենեցուն որք էին 'ի տան նր: 33 *Եւ առեալ զնոսա 'ի նմին ժամու գիշերոյն՝ լուաց 'ի վիրաց անտի. և մկրտեցաւ ինքն՝ և իւրքն ամենեքեան անդէն վաղվաղակի: 34 *Եւ ածեալ զնոսա 'ի տուն իւր, եդ առաջի սեղան. և ուրախ եղև ամ տամբն հաւատացեալ յԱ.Ծ: 35 *Եւ իբրև այգ եղև՝ առաքեցին զօրագլուխքն զնուիրակսն, և ասեն. արձակեա՛ զարս զայդոսիկ: 36 *Եւ պատմեաց բանտապետն զբանսն՝ պօղոսի. եթէ առաքեցին զօրագլուխքն զի արձակիցիք. արդ ելէ՛ք՝ և երթա՛յք խաղաղութբ:

37 *Իսկ պօղոս ասէ ցնոսա՝ գան հարեալ զմեզ հրապարակաւ՝ արս անմեղս հռոմայեցիս՝ արկին 'ի բանտ. և արդ լռելեայն հանեն զմեզ. ո՛չ այդպէս. այլ եկեսցեն, 38 *Ինքեանք իսկ հանցեն զմեզ: և պատմեցին զօրագլխոցն նուիրակքն զբանսն: զահի հարան՝ իբրև լուան թէ հռոմայեցիք են. և եկեալ 39 աղաչեցին զնոսա: *Եւ իբրև հանին, աղաչէին գնալ 'ի քաղաքէն: 40 *Եւ ելեալ 'ի բանտէն՝ մտին առ լիդիայ: Եւ տեսեալ զեղբարս՝ մխիթարեցին զնոսա՝ և գնացին:

## ԳԼ: ԺԷ.

1 Եւ շրջեալ ընդ ամփիպօղիս, և ընդ ապօղոնիայ, եկին 'ի թեսաղոնիկէ, ուր էր ժողովուրդ հրէից: 2 *Եւ ըստ սովորութեն պօղոս եմուտ առ նս: և 'ի շաբաթս երիս խօսեցաւ ընդ նոսա 'ի գրոց: 3 *Բանայր, և դնէր առաջի, եթէ պա՛րտ էր Քի չարչարիլ և յառնել 'ի մեռելոց: Եւ նա է Քս 4 Յս՝ զոր ես պատմեմ ձեզ: *Եւ ոմանք 'ի նոցանէ հաւանեցան. և վիճակեցան պօղոսի և շիղայի: բայց պաշտօնէից հեթանոսաց էր բազմութի յոյժ. և 'ի կանանց գլխաւորաց ո՛չ սակաւք: 5 *Եւ նախանձեցան հրէայքն, և առեալ արս ոմանս գռեհիկս՝ անօրէնս՝ ամբոխ արարեալ խռովեցին զքաղաքն և կուտեալ յապարանսն յասօնի, խնդրեցին զնս ածել 'ի հրապարակ: 6 *Եւ իբրև ո՛չ գտին զնոսա՝ քարշէին զյասօն և զոմանս եղբարս առ քաղաքապետսն. բողոք բարձեալ՝ եթէ որք զաշխարհս խռովեցին՝ սոքա և այսր 7 հասին: *Զորս ընկալեալ է յասօնի: և սոքա ամենեքեան հակառակ հրամանաց կայսեր գործեն. թագաւոր 8 զոմն ասեն զՅս: *Եւ խռովեցուցին զժողովուրդսն և զքաղաքապետսն, որք 9 լսէին զայս: *Եւ առեալ զերաշխաւորութի առ 'ի յասոնայ և յայլոցն՝ արձակեցին զնս: 10 *Բայց եղբարքն վաղվաղակի գիշերայն յուղարկեցին զպօղոս և զշիղայ 'ի բերիա: որք իբրև հասին անդր՝ 'ի ժողովուրդն հրէից 11 գնացին: *Եւ սոքա էին ազնուականք քան որք 'ի թեսաղոնիկէն էին: որք ընկալան զբանն ամ յօժարութբ: հանապազ քննէին զգիրս, եթէ իցէ 12 այս այսպէս: *Եւ բազումք 'ի նոցանէ հաւա-

Margin: նոցա; #2. Կոր. 11.25. Փիլիպ. 1.13. 1. Թես. 2. 2.; ժողով. բան.

հաւատացին ։ և 'ի յունաց կանանց
զգաստից՝ և յարանց ո՛չ սակաւք ։
13 *Այլ իբրև գիտացին, որք 'ի Թե_
սաղոնիկէ հրեայքն էին, եթէ և 'ի
բերիայ պատմեցաւ 'ի պօղոսէ բանն
Ա.Յ, եկին և անդր շարժել և խռովե
ցուցանել զժողովսն ։ 14 * Յայնժամ
վաղվաղակի զպօղոս առաքեցին եր
թալ գնալ մինչև 'ի ծովեզր ։ և մնա
ցին շիղա և տիմոթէոս անդէն ։
15 *Եւ որք տանէին զպօղոս, ածին զնա
մինչև յաթէնս ։ և առեալ պատուէր 'ի
նմանէ առ շիղայ և տիմոթէոս, զի վաղ
վաղակի եկեսցեն առ նա. և գնացին ։

Գ.Լ:

16 *Եւ յաթէնս 'ի մնալ նոցա պօղոսի,
զայրանայր հոգին նր 'ի նմա ։ զի տեսա
նէր 'ի կռապաշտութն զքաղաքն ։
17 *Եւ խօսէր 'ի ժողովրդեանն ը հրէ
այս և ընդ պաշտօնեայս՝ և 'ի հրապա
րակսն զամ օր՝ որոց և պատահէին ։
18 *Ոմանք յեպիկուրեանցն, և 'ի ստոյի
կեանցն փիլիսոփայից հակառակէին
ընդ նմ ։ և ոմանք ասէին՝ զի՞նչ կամիցի
սերմանաքաղս այս խօսել ։ իսկ այլք,
թէ օտարոտի իմն դից թուի պատ_
միչ լինել ։ քանզի զՅս և զյարութին
աւետարանէր ։ 19 *Եւ առեալ զնա ա_
ծին յարիսպագոսն ։ և ասէին՝ կարաս
ցուք իմանալ թէ զի՞նչ է նոր վար_
դապետութիդ՝ որ 'ի քէն պատմի ։
20 *Օտարացուցիչս իմն բերես 'ի լսելիս
մեր. կամիմք գիտել թէ զի՞նչ կամի
ցի այս լինել ։ 21 *Զի աթենացիքն ամե
նեքին՝ և եկքն օտարք, ո՛չ յայլ ինչ պա
րապէին՝ բայց ասել ինչ՝ կամ լսել նո
րագոյնս ։ 22 *Եկաց պօղոս 'ի մէջ արիս
պագին՝ և ասէ ։ արք աթենացիք, ըստ
ամի իբրև պաշտօնասէրս տեսանեմ
զձեզ ։ 23 * Քանզի շրջեալ և տեսեալ
զպաշտամունս ձեր, գտի բագին մի.
յորում գրեալ էր անծանօթի Ա.Յ՝
զոր դուք յանծանօթս պաշտէք. ես
զնոյն պատմեմ ձեզ ։ 24 *Ա.Ծ՝ որ արար
զաշխարհս և զամ, որ 'ի նմա, նա երկ
նից և երկրի է Տր ։ ո՛չ 'ի ձեռագործ
տաճարս բնակի ։ 25 * Եւ ո՛չ 'ի ձեռաց
մարդկան պաշտի իբրև կարօտ իմիք ։
նա տայ ամի կեանս՝ և զշունչ՝ և զամ
ինչ ։ 26 *Արար 'ի միոջէ արենէ զամենայն
ազգս մարդկան՝ բնակել 'ի վր ամ
երեսաց երկրի ։ հաստատեաց կարգել
ժամանակս՝ և սահմանադրութի բնա
կութե նց՝ խնդրել զԱ.Ծ ։ 27 *Զի թե
րևս զննիցեն զնա՝ և գտանիցեն ։ նաև
ո՛չ հեռի իսկ է յիւրաքանչիւրումե_
քէ 'ի մէնջ ։ 28 * Զի նովաւ կեամք՝ և
շարժիմք՝ և եմք ։ ոպ և ոմանք 'ի ձե_
րոց ճարտարաց ասացին ։ 29 *Թէ նորա

Ծննդ. 1. 1. Եր. 14. 14. Եր. 7. 48.

և ազգ իսկ եմք ։ և արդ՝ որովհետև
ազգք եմք Ա.Յ, ո՛չ պարտիմք համա_
րել ոսկւոյ՝ կամ արծաթոյ՝ կամ քա_
րի, որ 'ի ճարտարութենէ և 'ի մտաց
մարդոյ քանդակեալ իցէ՝ զԱ.Ծականն
լինել նմանօղ ։ 30 * Այլ զժամանակս
անգիտութե անտես արարեալ Ա.Յ ։
արդ զայս պատուիրէ մարդկան՝ ամ
ումեք ապաշխարել ։ 31 *Քանզի հաստա
տեաց օր՝ յորում պարտ է դատել զաշ_
խարհս արդարութբ՝ 'ի ձեռն առն՝
որով սահմանեաց տալ հաւատս ամե
նեցուն՝ յարուցեալ զնա 'ի մեռելոց ։
32 *Իբրև լուան զյարութի մեռելոց,
ոմանք ծաղր առնէին զնա ։ կէսքն
ասէին՝ լուիցուք 'ի քէն վն այդորիկ
միւսանգամ ։ 33 * Եւ ապա պօղոս ել և
գնաց 'ի միջոյ նոցա ։ 34 * Եւ ոմանք արք
անկեալք 'ի նա, հաւատացին ։ ընդ որս
էր և դիոնէսիոս արիսպագացի և կին
մի անուն դամարիս՝ և այլք ընդ նոսա ։

## Գ.Լ: ԺԸ:

1 Յետ այսորիկ մեկնեալ պօղոսի յա
թենացւոց անտի՝ եկն 'ի կորն_
թոս ։ 2 * Եւ եգիտ զհրեայ զոմն անուն
ակիւղաս՝ յազգէ պոնտացի. այն ինչ
եկեալ յիտալիայ. և զպրիսկիղայ կին   յիտալիոյ
նր ( վասն հրամանին կլօդեայ՝ որոշել
զամ հրեայս 'ի հռոմայ ։ ) և յարեցաւ
'ի նոսա ։ 3 * Եւ վասնզի համարուեստ
էր՝ եղև առ նոսա՝ և գործէր ։ ( քանզի
էին խորանակարք արուեստիւ ։ )
4 * Եւ խօսէր 'ի ժողովրդեանն ըստ ամ
շաբաթու ։ և հաւանեցուցանէր զհրէ
այս՝ և զհեթանոսս ։ 5 * Իբրև իջին 'ի
մակեդոնիայ՝ շիղա և տիմոթէոս, ստի
պէր հոգւովն պօղոս դնել զվկայութի
հրէիցն՝ թէ Յս է Քս ։ 6 * Եւ յընդ
դէմ դառնալ նց՝ և 'ի հայհոյել՝ թօ
թափեաց զձորձս՝ և ասէ ցնս. արիւն
ձեր 'ի գլուխս ձեր՝ քաւեալ եմ ես.
յայսմհետէ 'ի հեթանոսս երթամ ։
7 * Եւ գնացեալ անտի՝ եմուտ 'ի տուն
ուրումն, որոյ անուն էր տիտոս յուս_
տոս՝ պաշտօնեայ այ ։ որոյ ապարանք
էին մերձ 'ի ժողովետղն ։ 8 * Կրիսպոս
ժողովրդապետ հաւատաց 'ի Տր ամ
տամբ իւրով ։ և բազմաց կորնթացւոց
լուեալ՝ հաւատային 'ի Տր՝ և մկրտէին ։
9 * Եւ ասէ Տր 'ի գիշերին տեսլեամբ
ցպօղոս ։ մի երկնչիր՝ այլ խօսեաց՝ և
մի լռեր ։ 10 * Քանզի ես ընդ քեզ եմ ։
և ոչ ոք ընդդէմ դարձցի քո, 'ի չար_
չարել զքեզ. քանզի ժողովուրդ է իմ
բազում 'ի քաղաքիս յայսմիկ ։
11 * Եւ նստաւ անդ տարի մի և ամիս
վեց՝ ուսուցանել նոցա զբանն այ ։

*Ա.ռ

ԺԸ

12 *Առ գաղիոնաւ փոխանակաւ բդեշխին աքայեցւոց. յարեան միաբան Հրէայքն ՚ի վերայ պօղոսի, և ածին զնա յատեան։ 13 *Եւ ասէին, եթէ արտաքոյ օրինաց պատրէ սա զմարդիկ պաշտել զԱծ ։ 14 *Եւ իբրև մերձ էր պօղոս բանալ զբերան իւր, ասէ գաղիոն ցՀրէայսն. եթէ էր ինչ անիրաւութի կամ խարդախութի չարեաց՝ ով Հրէայք՝ ՚ի դէպ էր ինձ անսալ ձեզ։ 15 *Ապա եթէ խնդիրք ինչ են վս բանի և անուանց՝ և օրինաց ձերոց՝ տեսէք ձեզէն ։ քանզի դատաւոր այդպիսի իրաց չկամիմ լինել։ 16 *Եւ մերժեաց զնոսա յատենէ անտի ։ 17 *Եւ առեալ ամենեցուն յունաց զսոսթենէս ժողովրդապետ՝ հարկանէին առաջի ատենին. և ոչինչ գաղիոնի փոյթ լինէր ։ 18 *Իսկ պօղոսի տակաւին մնացեալ աւուրս բազում՝ յեղբարց հրաժարեալ՝ նաւէր յասորիս։ (և ընդ պրիսկիղայ և ակիւղայ) ‖ փոքրել զգլուխ ՚ի կենքրայ. քանզի ուխտադիր էր։ 19 *Եւ հասեալ յեփեսոս՝ զնս եթող անդ. և ինքն մտեալ ՚ի ժողովուրդն՝ խօսէր ը Հրէայսն։ 20 *Եւ աղաչէին զնա բազում ժամանակս լինել անդ. և ոչ էառ յանձն։ 21 *Այլ հրաժարեալ ՚ի նոցանէ. և ասէ դարձեալ շրջեցայց առ ձեզ Այ կամօք՝ ամբարձաւ յեփեսոսայ։ 22 *Իջեալ ՚ի կեսարիայ, ել և ետ ողջոյն եկեղեցւոյն. էջ յանտիոք։ 23 *Եւ եղեալ անդ ժամանակս ինչ. և շրջել կարգաւ ընդ գաղատացւոց աշխարհն. և ընդ փռիւգիայ, հաստատել զամ աշակերտեալսն։ 24 *Հրեայ ոմն ապողոս անուն, աղեքսանդրացի յազգէ. այր ճարտարաբան, եկն եհաս յեփեսոս. զօրաւոր էր գրովք։ 25 *Սա էր տեղեկացեալ ճանապարհին Տն, և եռայր հոգւով. խօսէր, և ուսուցանէր ճշմարտութբ վս Յի ։ գիտէր միայն զմկրտութին յոհաննու ։ 26 *Սա սկսաւ համարձակիլ ՚ի ժողովրդեանն։ և լուեալ ՚ի նմանէ ակիւղայ և պրիսկիղայ, առին զնա առ իւրեանս։ և ճշմարտագոյն պատմեցին նմա զճանապարհն Այ ։ 27 *Իբրև կամեցաւ նա գնալ յաքայիա, յօժարեալ եղբարք գրեցին առ աշակերտսն ընդունել զնա։ որ իբրև եհաս անդր՝ բազում նպաստ լինէր հաւատացելոցն ՚ի ձեռն շնորհացն։ 28 *Քանզի պնդագոյն զՀրէայսն յանդիմանէր հրապարակաւ ։ ցուցանել գրովք եթէ Քն է Յս։

փոքրեալ ‖ Թուոց 6.18. Գործ. 21. 24.

Եւ շրջէր

ապողոս

Գլ: ԺԹ.

ԺԹ

1 Եւ եղև մինչդեռ ապողոսն ՚ի կորնթոս էր, պօղոսի շրջեալ զվերին կողմամբքն՝ և իջեալ յեփեսոս. և գտեալ զոմանս զաշակերտս ։ 2 *Ասէ ցնս՝ եթէ զհոգի սբ ընկալայք ՚ի հաւատալն։ Նոքա ասեն. այլ և ոչ եթէ հոգի սբ գուցէ՝ լուեալ է մեր։ 3 *Եւ ասէ՝ իսկ յինչ մկրտեցայք։ Նք ասեն ՚ի յոհաննու մկրտութին ։ 4 *Եւ ասէ պօղոս՝ ‖ յոհաննէս մկրտեաց մկրտութբ ապաշխարութե զամ ժողովրդեանն։ և ասէր՝ զի որ գալոցն է յետ նր, ՚ի նա հաւատասցեն. այս ինքն է՝ Յս Քս։ 5 *Եւ իբրև լուան, մկրտեցան յանուն Տն Յի։ 6 *Եւ ՚ի դնել ՚ի վր նց պօղոսի զձեռն, եկն հոգին սբ ՚ի վերայ նոցա։ խօսէին լեզուս՝ և մարգարէանային։ 7 *Եւ էին ամենեքեան արք իբրև երկոտասան ։ 8 *Եւ մտեալ ՚ի ժողովուրդն՝ համարձակիւր ամիսս երիս։ խօսէր, և հաւանեցուցանէր վս արքայութեն Այ ։ 9 *Իբրև ոմանք խստանային՝ և ընդդէմ դառնային բամբասել զճանապարհն առաջի բազմութեն, մեկնեալ ՚ի նոցանէ՝ որոշեաց զաշակերտսն ։ հանապազ օր խօսէր ՚ի դպրոցին տիւրաննի ուրումն։ 10 *Եւ այս եղև զերկամ մի, մինչև ամ. բնակչացն ասիացւոց լսել զբանն Տն, Հրէից՝ և հեթանոսաց։ 11 *Եւ զօրութիւ ոչ սակաւս Ած առնէր ՚ի ձեռն պօղոսի ։ 12 *Մինչ զի և ՚ի հիւանդս տանիլ ՚ի քրտանէն թաշկինակս և կամ վարշամակս . և մերժել ՚ի նոցանէ ախտիցն . և այսոց չարաց ելանել։ 13 *Յանդգնեցան ոմանք և ՚ի շրջօղ Հրէիցն, որք երդմնեցուցիչքն էին անուանեալք ՚ի վր այնոցիկ՝ որք ունէին այսս չարս, զանուն Տն Յի, և ասէին ։ երդմնեցուցանեմ զձեզ ՚ի Յն՝ զոր պօղոսն քարոզէ։ 14 *Էին ուրումն սկեւայ Հրէի քահանայապետի եօթն որդիք, որք զայս առնէին։ 15 *Պատասխանի ետ այսն չար, և ասէ ցնս։ զՅս գիտեմ, և զպօղոս ճանաչեմ, բայց դուք ով էք։ 16 *Եւ վազեաց այրն՝ յորում էր այսն չար՝ ըմբռնեալ զերկոսեանն՝ յաղթահարեաց զնս, մինչև մերկս և վիրաւորս փախչել ՚ի տանէ անտի ։ 17 *Եւ այս յայտնի եղև ամ Հրէից և հեթանոսաց՝ որք բնակեալ էին յեփեսոս ։ և անկաւ երկիւղ յամենեսեան ՚ի նս։ և մեծանայր անուն Տն Յի։ 18 *Եւ բազումք ՚ի հաւատացելոցն գային, և խոստովան լինէին, և պատմէին զգործս իւրեանց ։ 19 *Եւ բազումք ՚ի կախարդացն բերէին զգիրսն, և այրէին առաջի ամենեցուն ։ համարեցին զգինս նոցա, և գտանէին արծաթոյ դահեկանի՝ բիւրս հինգ ։ 20 *Եւ այսպէս

Մատթ. 3.11. Մարկ. 1. 8. Ղուկ. 3.16. Յոհ. 1. 26. Գործ. 1. 5. և 11.16.

բանն

բանն Տ՟Ն աճէր՝ և զօրանայր։

ԻԹ

21 * Եւ իբրև կատարեցաւ այս, եդ պօղոս 'ի մտի շրջել ընդ մակեդոնիայ՝ և ընդ աքայիայ՝ և գնալ յեմ՟։ ասէր, եթէ յետ երթալոյն իմոյ անդր, պարտ է ինձ և զհռօմ տեսանել։ 22 * Առաքեաց 'ի մակեդոնիայ երկուս 'ի պաշտօնէից իւրոց զտիմոթէոս՝ և զերաստոս. և ինքն մնաց 'ի ժամանակս ինչ յասիայ։ 23 * Եւ եղև 'ի ժամանակին յայնմիկ խռովութի ոչ սակաւ վասն ճանապարհին Տ՟Ն։ 24 * Իսկ դեմետրիոս ուրուամն անուն՝ արծաթագործ, գործէր մեհեանս արծաթիս արտեմի դից։ և տայր ճարտարացն լինիլ ոչ սակաւ շահ։ 25 * Զոր ժողովեալ իսկ և զձեռագէտս արուեստին, և ասէ. արք՝ դուք ձեզէն իսկ գիտէք, զի յայսմ գործոյ է շահ մեզ։ 26 * Եւ տեսանէք, և լսէք՝ եթէ ոչ միայն զեփեսացւոց, այլ գրեթէ զամ՟ իսկ ասիացւոց՝ պօղոս այս՝ հաւանեցուցեալ շրջեաց բազում ժողովս՝ ասել՝ եթէ ոչ են աստուածք՝ ձեռագործք։ 27 * Եւ ոչ միայն այս ճգնէ զմեր կողմնս գալ 'ի յանդիմանութի, այլ և զմեծին աստուածոյ արտեմեայ զմեհեանն յոչինչ համարիլ։ նաև քակելոց ևս իցէ զմեծութի նորա. զոր ամ՟ ասիա՝ և տիեզերք պաշտեն։ 28 * Եւ զայս իբրև լուան, լի եղեն բարկութ՟ե։ աղաղակէին և ասէին. մեծ է արտեմիս եփեսացւոց։ 29 * Եւ լցաւ քաղաքն խռովութ՟ե՝ և դիմեցին առհասարակ 'ի թէատրոնն յափշտակելով զգայիոս և զարիստարքոս մակեդոնացի զուղեկիցսն պօղոսի։ 30 * Բայց պօղոս իբրև կամեցաւ մտանել յամբոխն, ոչ թողին զնա աշակերտքն։ 31 * Ոմանք և յասիայ պետացն, որք էին նր՟ բարեկամք, յղէին առ նա՝ և աղաչէին, մի տալ զանձն 'ի թէատրոնն։ 32 * Այլք զայլինչ աղաղակէին. զի էր ժողովն նչ՟ խռովեալ։ և բազումք 'ի նոցանէ ոչ գիտէին, եթէ վա՟ որ ժողովեալ իցեն։ 33 * Եւ յամբոխին բազմութէ յառաջ կալան զաղէքսանդրոս. և իբրև ածին յառաջ զնա հրէայքն, աղէքսանդրոս շարժեաց զձեռն՝ և կամէր պատասխանի տալ ամբոխին։ 34 * Իբրև գիտացին եթէ այրն հրեայ է, մի բարբառ եղև յամենեցունց՝ իբրև ժամս երկուս աղաղակել, եթէ մեծ է արտեմիս եփեսացւոց։ 35 * Լռեցոյց դպրապետն զամբոխն՝ և ասէ. արք եղբարք՝ իսկ ո՞վ է 'ի մարդկանէ՝ որ ոչ գիտէ զեփեսացւոց քաղաքս մեհենազարդ՝ մեծին արտեմեայ դիցն, և դիոպետեայ։ 36 * Եւ զի այդ այդպէս է անհակառակ, ձեզ պարտ է հանդարտել. և մի ինչ յանդգնութ՟ե գործել։

37 * Ածիք զարսդ զայդոսիկ այսր. ոչ մեհենակապուտս՝ և հայհոյիչս աստուածոյ մերոյ։ 38 * Զի եթէ դեմետրիոս՝ և որք ը՟ նմա ճարտարքն՝ ունիցին ինչ ընդ ումեք բանս՝ յատեան երթիցեն. և դատաւորք գոն՝ և ամբաստան լիցին զմիմեանց։ 39 * Ապա եթէ վա՟ այլոյ իրիք խնդիր իցէ՝ յօրինաւոր ժողովն վճարեսցի։ 40 * Քանզի և մեզ վիշտ վտանգի է ընդ կռուոյս այսր աւուր՝ առանց իրիք յանցանաց լինելոյ. (զորմէ ոչ կարասցուք պատասխանի տալ) վասն ժողովոյս այսորիկ։ և զայս ասացեալ՝ արձակեաց զժողովն։

(Margin: դիանայ դից · որ՟ ձե_ ռօք ւէ_ նին · դիանա · մեծ է դիանա · դիանայ դիցն և դիոպետեայ)

## ԳԼ: Ի։

Ի Գ

1 Եւ յետ դադարելոյ ամբոխին՝ կոչեաց պօղոս զաշակերտսն, և մխիթարեաց. ողջոյն ետ՝ և ել գնաց 'ի մակեդոնիայ։ 2 * Եւ շրջեալ ընդ կողմանսն ընդ այնոսիկ՝ և մխիթարեալ զնս՟ բանիւք բազմօք՝ եկն յելլադայ։ 3 * Իբրև արար անդ ամիսս երիս, եղև նմա դաւ 'ի հրէիցն, մինչդեռ կամէր ելանել յասորիս. խորհուրդ կալաւ դառնալ ընդ մակեդոնիայ։ 4 * Եւ երթայր ընդ նմա մինչև յասիայ, սոսիպատրոս՝ պիւռա բերիացի. և 'ի թեսաղոնիկեցւոց արիստարքոս՝ և սեկունդոս՝ և գայիոս դերբեացի՝ և տիմոթէոս՝ և ասիացիք. տիւքիկոս՝ և տրոփիմոս։ 5 * Նոքա յառաջ երթեալ մնային մեզ 'ի տրովադայ։ 6 * Եւ մեք նաւեցաք յետ աւուրցն բաղարջակերաց 'ի փիլիպպեայ՝ և եկաք առ նս՟ 'ի տրովադայ՝ մինչև յաւուրս հինգ. անդ դադարեցաք աւուրս եօթն։ 7 * Եւ յաւուրն շաբաթու՝ մինչդեռ ժողովեալ էաք բեկանել զհացն, պօղոս խօսէր ընդ նոսա. զի գնալոց էր 'ի վաղիւն անդր. և երկայնեաց զբանն մինչև 'ի մէջ գիշերին։ 8 * Եւ էին լապտերք բազումք 'ի վերնատանն՝ ուր էաքն ժողովեալք։ 9 * Եւ նստէր ոմն երիտասարդ՝ անուն եւտիքոս՝ 'ի վերայ պատուհանին, նիրհէր 'ի քուն թանձրութե. 'ի խօսելն պօղոսի յաճախ, ընկղմեալ 'ի քնոյ անտի՝ անկաւ յերրորդ դստիկոնէն 'ի վայր, և բարձաւ մեռեալ։ 10 * Եւ իջեալ պօղոս՝ անկանիւր զնովաւ. առնոյր զնա 'ի գիրկս՝ և ասէր։ մի խռովիք. քանզի հոգի սորա 'ի սմին է։ 11 * Եւ եբեկ զհացն՝ և ճաշակեաց. և բազում ևս խօսեցաւ մինչև յառաւօտ. և ապա ել և գնաց։ 12 * Եւ ածին զպատանին կենդանի. և մխիթարեցան ոչ սակաւ։

(Margin: և ելեալ գնաց)

* Եւ

13 *Եւ մեք մտեալ 'ի նաւ՝ ամբարձաք յասոն. անտի ակնունէաք միւսանգամ առնուլ զպօղոս. զի այնպէս պատուիրեալ էր՝ մինչ ինքն զցամաքաւն երթալոց էր: 14 *Եւ իբրեւ դիպեցաւ մեզ յասոն՝ առեալ զնա եկաք 'ի միտիլենէ: 15 *Եւ անտի նաւարկեալ՝ եւ 'ի վաղիւ անդր հասաք հանդէպ քիոյ. եւ 'ի միւս եւս օրն հասաք 'ի սամոս. եւ 'ի վաղիւ անդր եկաք 'ի մելիտոն: 16 *Զի 'ի միտի եդեալ էր պօղոսի նաւել առ եփեսոսաւ՝ որպէս զի մի՛ լիցի նմա ժամանակ ինչ յամել յասիայ. քանզի փութայր՝ եթէ հնար ինչ իցէ նմա՝ զօրն պենտեկոստէից երթալ յԵրուսաղէմ:

ԻԵ

17 *Եւ 'ի մելիտեայ յղեալ յեփեսոս՝ կոչեաց զերիցունս եկեղեցւոյն: 18 *Եւ իբրեւ եկին առ նա՝ ասէ ցնոսա. դուք ձեզէն գիտէք՝ յօրէ յառաջնմէ՝ յորմէ եկի յասիայ. ո՞րպէս ընդ ձեզ զամ ժամանակսն եղէ: 19 *Ծառայել Տ՟ն ամ խոնարհութեամբ՝ եւ բազում արտասուօք՝ եւ փորձութեամբք. որք դիպեցան ինձ 'ի նենգութեանց հրէից: 20 *Ոչ ինչ զանգիտեցի յօգտակարացն չպատմել ձեզ՝ եւ ուսուցանել զձեզ հրապարակաւ, եւ առ տունս: 21 *Տալ զվկայութիւն հրէից եւ հեթանոսաց զապաշխարութեան որ առ Ա՟Ծ. եւ զհաւատոցն որ 'ի Տ՟Ր մեր Յ՟Ս Ք՟Ս: 22 *Եւ արդ՝ ահաւասիկ ես կապեալ հոգւով երթամ յԵրուսաղէմ: եւ որինչ անդ ընդ իս անց անցանելոց իցէ՝ չգիտեմ: 23 *Բայց զի հոգին սուրբ ըստ քաղաքաց քաղաքաց վկայէ ինձ, եւ ասէ. եթէ կապանք եւ նեղութիւնք մնան քեզ: 24 *Այլ ոչ ինչ համարիմ զանձն իմ պատուական՝ որպէս զի կատարեցից զընթացս իմ ուրախութեամբ՝ եւ զպաշտօնն զոր առի 'ի Տ՟Է Յ՟Է վկայ լինիլ աւետարանի շնորհացն Ա՟Յ: 25 *Եւ արդ՝ ահաւասիկ գիտեմ ես, եթէ ոչ եւս տեսանէք զերեսս իմ դուք ամենեքեան, յորս շրջեցայ քարոզել զարքայութիւն ա՟յ: 26 *Վ՟Ս որոյ զվկայութիւն դնեմ ձեզ յաւուր յայսմիկ՝ զի սուրբ եմ յարենէ ամենեցուն: 27 *Քանզի ոչ խորշեցայ 'ի պատմելոյ ձեզ զամենայն կամսն Ա՟Յ: 28 *Զգո՛յշ կացէք անձանց՝ եւ ամ հօտին. յորում եդ զձեզ հոգին ս՟բ տեսուչս՝ հովուել զժողովուրդ Տ՟Ն, զոր ապրեցոյց արեամբն իւրով: 29 *Քանզի գիտեմ ես՝ եթէ յետ իմոյ մեկնելոյ՝ գայցեն գայլք յափշտակօղք 'ի ձեզ. որք ոչ խնայիցեն հօտին: 30 *Եւ 'ի ձէնջ յարիցեն արք, որք խօսիցին թիւրս՝ ձգել զաշակերտսն զկնի իւրեանց: 31 *Վասն այսորիկ արթուն զգուշ կացէք. զի զերկամ մի՝ զցայգ եւ զցերեկ՝ ոչ դադարեցի արտասուօք խրատել 32 զմի մի իւրաքանչիւր: *Եւ արդ յանձն առնեմ զձեզ Ա՟Յ՝ եւ բանի շնորհաց ն՟Ր, որ կարօղն է շինել՝ եւ տալ ձեզ զժառանգութիւն ընդ ս՟բս ամ: 33 *Արծաթոյ՝ կամ ոսկւոյ՝ կամ հանդերձից՝ ոչ ուրուք 'ի ձէնջ ցանկացայ: 34 *Դուք ինքնին գիտէք՝ ‖ զի զպէտս իմ, եւ որոց ընդ իս էին՝ պաշտեցին 35 ձեռքս այս: *Եւ զամ ինչ ցուցի ձեզ. զի այսպէս պա՛րտ է վաստակել. եւ դարմանել զհիւանդս. եւ յիշել զբանն Տ՟Ն Յ՟Ի, զոր ինքն իսկ ասաց՝ երանելի է մանաւանդ տալն քան զառնուլն: 36 *Եւ զայս իբրեւ ասաց՝ եդեալ ծունր ամենեքումբք եկաց յաղօթս: 37 *Բազում լալիւն եղեւ ամենեցուն. եւ անկեալ զպարանոցաւն պօղոսի՝ համբուրէին 38 զնա: *Մորմոքէին մանաւանդ 'ի վերայ բանին՝ զոր ասէր. թէ ոչ եւս տեսանելոց են զերեսս նորա. եւ յուղարկեցին զնա 'ի նաւ անդր:

‖ 1. Կոր. 4. 12. 1. Թես. 2. 9. 2. Թես. 3. 8.

## ԳԼ. ԻԱ.

ԻԶ

1 Եւ իբրեւ եղեւ ելանել մեզ եւ մեկնիլ 'ի նոցանէ. հանդէպ գնացեալ եկաք 'ի կով. եւ 'ի վաղիւ անդր 'ի հռոդոն. եւ անտի 'ի պատարա: 2 *Եւ գտեալ նաւ մի, զի երթայր 'ի փիւնիկէ. եւ ելեալ 'ի նա՛ գնացաք: 3 *Եւ յայտ եղեալ կիպրեայ՝ թողաք զնա 'ի ձախակողմն, նաւեցաք յասորիս, եւ իջաք 'ի տիւրոս. քանզի անդ էր նաւն թափելոց զբեռինսն: 4 *Եւ գտեալ զաշակերտսն՝ կացաք անդ աւուրս եօթն, որք ասէին ցպօղոս 'ի ձեռն հոգւոյն՝ մի՛ ելանել յԵրուսաղէմ: 5 *Եւ իբրեւ եղեւ մեզ կատարել զաւուրսն՝ ելեալ գնայաք՝ յուղարկեալ զմեզ ամենեցուն հանդերձ կանամբք եւ որդւովք՝ մինչեւ արտաքոյ քաղաքին. եւ եդեալ զծունր՝ կացաք յաղօթս: 6 *Եւ հրաժարեցաք 'ի միմեանց առ ծովեզերն՝ եւ ելաք 'ի նաւն. եւ նոքա դարձան 7 յիւրեանց տեղիս: *Եւ մեր զնաւն առխթեալ 'ի տիւրոսէ՝ հասաք 'ի պտողեմայիդա. եւ զողջոյն տուեալ եղ-8 բարց՝ եղեաք օր մի առ նոսա: *Եւ 'ի վաղիւ անդր ելեալ անտի՝ եկաք 'ի կեսարիա. եւ մտեալ յապարանսն փիլիպպոսի աւետարանչի, ‖ որ էր յեօթանց 9 անտի՝ ագաք առ նմա: *Նորա էին դստերք չորք՝ կոյսք մարգարէք: 10 *Եւ 'ի լինելն մեր անդ աւուրս բազումս, էջ ոմն 'ի հրէաստանէ մար-11 գարէ անուն ագաբոս: *Եւ եկեալ առ մեզ. առեալ զգօտին պօղոսի՝ կապեաց զոտս եւ զձեռս իւր՝ եւ ասէ. այս-

‖ Վեր. 6. 5.

այսպէս ասէ Հոգին սուրբ. զայրն, որոյ գօտիս այս է՝ այսպէս կապեսցեն Հրէայք՝ և մատնեսցեն ՚ի ձեռս հեթանոսաց։ 12 *Եւ իբրև լուաք զայն՝ աղաչէաք մեք՝ և որք ՚ի տեղւոջն էին՝ չելանել նմա յԵրուսաղէմ։ 13 *Յայնժամ պատասխանի ետ պօղոս. զի՞նչ գործէք՝ զի՞ լայք, և ձմլեցուցանէք զսիրտ իմ. քանզի ես ոչ միայն կապելոյ՝ այլև մեռանելոյ յԵրուսաղէմ պատրաստ եմ, վասն անուան Տն Յի Քի։ 14 *Եւ ՚ի չանսալն նորա՝ լռեցաք. ասեմք, Տն կամք լիցին։

ԿԷ

15 *Եւ յետ աւուրցն այնոցիկ՝ համդերձ եղանէաք յԵրուսաղէմ։ 16 *Եկին ընդ մեզ և յաշակերտաց անտի կեսարացւոց. և տանէին զմեզ առ որում վանս ունելոց էաք՝ Մնասոնի ումեմն կիպրացւոյ՝ առաջնոյ աշակերտի։ 17 *Եւ ՚ի մտանելն մեր յԵրուսաղէմ, խնդութեամբ ընկալան զմեզ եղբարք։ 18 *Ի վաղիւն անդր եմուտ պօղոս ընդ մեզ առ յակոբոս. և եկին ամ երիցունքն։ 19 *Եւ ողջոյն տուեալ նոցա՝ պատմէր մի ըստ միոջէ՝ զոր արար Ած ՚ի հեթանոսս ՚ի ձեռն պաշտաման նորա։ 20 *Եւ նոցա լուեալ՝ փառաւոր առնէին զԱծ, և ասեն ցնա տեսանես եղբայր՝ քանի՛ բիւրք են հաւատացելոցն Հրէից. և ամենեքեան նախանձաւորք օրինացն են։ 21 *Բայց իրազեկ եղեն վասն քո՝ թէ զապստամբութիւն ուսուցանես ՚ի մովսիսէ՝ որոց ՚ի հեթանոսս ամ Հրէայք են. ասես մի՛ թլփատել զորդիս նոցա՝ և մի՛ ըստ կրօնիցն գնալ։ 22 *Արդ՝ զի՞նչ լինիցի, ապաքէն լուիցեն թէ եկեալ ես։ 23 *Արդ՝ զա՛յս արա՝ զոր ասեմք քեզ. են ՚ի մեզ արք չորք ուխտաւորք յանձինս իւրեանց։ 24 *Զնոսա առեալ՝ սրբեսցիս ընդ նոսա. և ծախեա ինչ ՚ի նոսա՝ ‖ զի գերծցեն զգլուխս. և գիտասցեն ամենեքին, թէ զորոց իրազեկն եղեն զքէն՝ ոչինչ է. այլ միաբանիս և դու պահել զօրէնս։ 25 *Բայց վասն հաւատացելոցն հեթանոսաց, ‖ մեք առաքեցաք՝ որպէս ընտրեցաք, մի՛ ինչ այնպիսի պահել նց. բայց միայն զգուշանալ ՚ի կռոց զոհելոյ. և յարենէ. և ՚ի հեղձուցելոյ՝ և ՚ի պոռնկութենէ։ 26 *Յայնժամ պօղոսի առեալ զարսն՝ ՚ի վաղիւն անդր ընդ նոսա սրբեալ եմուտ ՚ի տաճարն. յայտ առնել զկատարումն աւուրցն սրբութեան. մինչև մատեաւ ՚ի վերայ իւրաքանչիւր ուրուք ՚ի նոցանէ պատարագ։

ԿԸ

27 *Եւ իբրև մերձ էին եօթն աւուրք ՚ի կատարել. տեսեալ զնա ՚ի տաճարին ասիացւոց Հրէիցն՝ զեղուին զնո-

‖ Թուոց 6. 18.
Գոր. 18. 18.
‖ Գոր. 15. 20. և 29.

ձլդ

վաւ զամ զամբոխն. և արկեալ ՚ի նա ձեռս՝ աղաղակէին։ 28 *Արք իսրայէլացիք՝ օգնեցէք. այս այր է՝ որ հակառակ ժողովրդեանն՝ և օրինացս՝ և տեղւոյս այսորիկ՝ ամենեցուն ամ ուրեք ուսուցանէ. մինչև հեթանոսս ևս եմոյծ ՚ի տաճարն՝ և պղծեաց զսբ տեղիս։ 29 *Քանզի էր յառաջագոյն տեսեալ զտրոփիմոս զեփեսացի ՚ի քաղաքին ընդ նմա. զոր կարծէին եթէ ՚ի տաճար անդր եմոյծ պօղոս։ 30 *Շարժեցաւ քաղաքն ամենայն, և կուտեցաւ ժողովուրդն. և առեալ զպօղոս ձգէին արտաքոյ տաճարին. և վաղվաղակի փակեցան դրունքն։ 31 *Եւ խնդրէին զնա սպանանել. եհաս զրոյց ՚ի հազարապետն գնդին, եթէ խռովեալ է ամ եէմ։ 32 *Որոյ անդէն առեալ զօրականս և հարիւրապետս՝ դիմեաց ՚ի վր նոցա. և նց տեսեալ զհազարապետն և զզօրականսն, դադարեցին ՚ի հարկանելոյ զպօղոս։ 33 *Յայնժամ մատուցեալ հազարապետն կալաւ զնա, և հրամայեաց զնա կապել երկին շղթայիւք՝ և հարցանէր՝ թէ ո՞ իցէ. և զի՞նչ իցէ արարեալ։ 34 *Այլք զայլիմն աղաղակէին ընդմանէ յամբոխին։ իբրև ոչ կարաց գիտել զստոյգն վասն ամբոխին, հրամայեաց ածել զնա ՚ի բանակն։ 35 *Եւ իբրև եհաս յաստիճանսն, դէպ եղև բառնալ՝ և բերել զնա ՚ի զօրականացն՝ վն բռնութեան ամբոխին։ 36 *Քանզի զհետ երթայր բազմութիւն ժողովրդեանն, և ասէին՝ բա՛րձ զդա։ 37 *Մինչդեռ մտանելոց էր պօղոս ՚ի բանակն, ասէ ցհազարապետն՝ եթէ արժան իցէ ինձ խօսիլ ընդ քեզ. և նա ասէ. յունարէն գիտես։ 38 *Ոչ արդեօք դու իցես եգիպտացին, որ յառաջքան զայսոսիկ աւուրս ապստամբեցուցեր՝ և հաներ յանապատ չորս հազարս արս սիկարեանս։

39 *Եւ ասէ պօղոս, ես եմ այր հրէայ՝ ՚ի տարսոնէ կիլիկեցւոց. ոչ աննշան քաղաքի քաղաքացի. աղաչեմ զքեզ հրամայեա ինձ խօսիլ առ ժողովուրդդ։ 40 *Եւ ՚ի հրամայելն նր՝ պօղոս կացեալ ՚ի վր աստիճանացն՝ շարժեաց զձեռն ժողովրդեանն։ և իբրև բազում լռութիւն լինէր. սկսաւ բարբառել հեբրայեցւոց բարբառովն՝ և ասէ։

## ԳԼ. ԻԲ.

1 Արք եղբարք, և հարք, լուարուք ինձ այժմ առ ձեզ պատասխանատուութեանս։ 2 *Իբրև լուան թէ հեբրայեցւոց լեզուովն բարբառեցաւ նոցա՝ առաւելևս դադարեցին ՚ի լռու-

թն: 3 * Եւ ասէ՝ ես եմ այր Հրեայ՝ ծնեալ 'ի Տարսոնի Կիղիկեցւոց՝ սնեալ 'ի քաղաքիս յայսմիկ՝ առ ոտս Գամաղիէլի, խրատեալ ըստ ճշմարտութեան հայրենի օրինաց. նախանձայոյզ էի Այ՝ որպէս ամենեքեան դուք էք այսօր:

‖ Վեր. 8. 3.

4 * ‖ Որ զայս ճանապարհ վարեցի մինչև 'ի մահ. կապել՝ և մատնել 'ի բանտս արս և կանայս: 5 * Որպէս և քահանայապետն վկայէ ինձ. և ամ ծերակոյտ. ‖ յորոց և թուղթս առեալ առ եղբարս 'ի Դամասկոս երթայի, ածել և անտի կապեալս յԵմ, զի պատժեսցին:

‖ Վեր. 9. 2.

ԾԲ

6 * Եւ եղև ինձ, 'ի գնալն և մերձենալ 'ի Դամասկոս. զմիջաւուրբն յանկարծակի յերկնից փայլատակեաց լոյս սաստիկ զինև: 7 * Եւ անկայ յերկիր. և լուայ բարբառ՝ որ ասէր ցիս. Սաւուղ, Սաւուղ, զի՞ հալածես զիս: 8 * Եւ ես ետու պատասխանի՝ թէ ով ես Տր: Եւ ասէ ցիս. ես եմ Յս Նազօրացի, զոր դու հալածես: 9 * Եւ այց որք ընդ իմն էին՝ զլոյսն տեսին, այլ զձայնն ոչ լսէին՝ որ խօսէր ընդ իս: 10 * Եւ ասեմ, զի՞նչ արարից՝ Տր: Եւ ասէ ցիս Տր. յարուցեալ երթիցես 'ի Դամասկոս. և անդ պատմեսցի քեզ վասն ամի՝ որ հրաման է քեզ առնել: 11 * Իբրև ոչ տեսանէի 'ի փառաց լուսոյն այնորիկ՝ ձեռանէ ձգեալ 'ի նոցանէ՝ որք ընդ իմն էին, մտի 'ի Դամասկոս: 12 * Անանիա ոմն, այր երկիւղած ըստ օրինաց, վկայեալ յամենայն բնակչաց՝ որք 'ի Դամասկոս Հրէայքն էին: 13 * Եկն, եկաց առ իս և ասէ. Սաւուղ եղբայր 'ի վեր հայեաց: 14 * Եւ ես նոյն ժամայն 'ի վեր հայեցայ 'ի նա: Եւ նա ասէ ցիս. Ած հարցն մերոց յառաջագոյն ընտրեաց զքեզ ճանաչել զկամս նորա՝ և տեսանել զարդարն, և լսել զբարբառ 'ի բերանոյ նորա: 15 * Զի եղիցիս վկայ նորա առ ամ մարդիկ՝ որոց տեսերն և լուար: 16 * Եւ արդ՝ զի՞ հեղգաս, արի, մկրտեաց և լուա զմեղս քո 'ի կարդալն զանուն նորա: 17 * Եւ եղև ինձ 'ի դառնալն յԵմ, և կալ յաղօթս 'ի տաճարին, լինել 'ի զարմացման: 18 * Եւ տեսանել զնա՝ զի ասէր ցիս. փութա՛, ել յԵմէ վաղվաղակի. քանզի չեն ընդունելոց զքո վկայութիւն վասն իմ: 19 * Եւ ես ասեմ. Տէր, ինքեանք իսկ գիտեն՝ ‖ զի ես էի՝ որ 'ի բանտ տայի, և գան հարկանէի ըստ ժողովրդոցն զհաւատացեալս 'ի քեզ: 20 * Եւ յորժամ հեղանիւր արիւն ստեփաննոսի վկային քոյ, ‖ ես ինքն էի՝ որ 'ի վերայ կայի. և կամակից լինէի սպանմանն նր. և պահէի զհանդերձս սպանողաց նր: 21 * Եւ ասէ

‖ Վեր. 8. 3.

‖ Վեր. 7. 57.

ցիս. գնա՛, զի ես 'ի հեթանոսս հեռաւորս առաքեցից զքեզ: 22 * Եւ ունկն դնէին նմա մինչև ցայս բան. ապա բարձին զձայնս իւրեանց և ասեն. բա՛րձ յերկրէ զայդպիսիդ՝ զի չէ պարտ այդպիսւոյդ կեալ: 23 * Եւ յաղաղակելն նոցա, և ընկենուլ զհանդերձս, 24 և զփոշին ցանել յօդս: * Հրամայեաց հազարապետն մուծանել զնա 'ի բանակն. ասէր գանիւ հարցանել զնա. զի գիտասցէ վասն որոյ յանցման այնպէս աղաղակէին զնմանէ: 25 * Եւ իբրև պրկեցին զնա փոկօք, ասէ պօղոս ցհարիւրապետն, որ 'ի վերայ կայր. եթէ զայր հռոմայեցի և անպարտ պարտ է 26 ձեզ գանհարկանել: * Եւ իբրև լուաւ հարիւրապետն, մատուցեալ առ հազարապետն պատմեաց՝ և ասէ. զի՞նչ կամիս առնել՝ քանզի այրս այս հռո-27 մայեցի է: * Եւ մատուցեալ հազարապետն ասէ ցնա. ասա՛ դու ցիս՝ հռոմայեցի՞ ես: Եւ նա ասէ՝ այո՛: 28 * Պատասխանի ետ հազարապետն. ես բազում գլխոց զզինուորութիւնս զայս ստացայ: Ասէ պօղոս, ես ծնեալ 29 իսկ 'ի դմին եմ: * Եւ վաղվաղակի 'ի բաց կային 'ի նմանէ՝ որք հարկանելոցն էին զնա. և հազարապետն իսկ երկեաւ՝ իբրև գիտաց թէ հռոմայեցի է. զի կապեալ ևս էր զնա: 30 * Եւ 'ի վաղիւն անդր կամէր գիտել զճշմարիտն. թէ զինչ չարախօսութիւն իցէ հրէիցն. արձակեաց զնա՝ և հրամայեաց կոչել զքահանայապետսն և զամ ատեանն. և իջուցեալ զպօղոս կացոյց 'ի մէջ նոցա:

ԾԳ

## ԳԼ: ԻԳ:

1 Եւ հայեցեալ պօղոսի յատեանն՝ ասէ. արք եղբարք՝ ես ամ ուղիղ մտօք գնացեալ եմ առաջի Այ մինչև 2 ցայսօր: * Եւ քահանայապետն անանիա հրամայեաց սպասաւորացն հարկանել զբերան նր: 3 * Յայնժամ պօղոս ասէ ցնա. հարկանելոց է զքեզ Ած որմ բռեալ. և դու նստիս դատել զիս ըստ օրինաց. և առանց օրինաց հրամայես զիս հարկանել: 4 * Եւ որք շուրջն կային՝ ասեն. զքա-5 հանայապետ Այ հայհոյես: * Եւ ասէ պօղոս՝ ոչ գիտէի եղբարք եթէ իցէ քահանայապետ: Գրեալ իսկ է՝ ‖ զիշխանս ժողովրդեան քոյ ոչ հայհոյես-6 ցես: * Իբրև գիտաց պօղոս եթէ մի կողմն սադուկեցւոց է՝ և միւսն փարիսեցւոց. աղաղակէր 'ի մէջ ատենին. արք եղբարք՝ ‖ ես փարիսեցի եմ, որդի փարիսեցւոյ. վասն յուսոյ և յարութե մե-

‖ Ելից 22. 28.

‖ Փիլիպ. 3. 5.

միւելոյ՝ ես աւասիկ դատիմ։ 7 * Եւ զայս իբրեւ ասաց՝ եղեն հերձուածք փարիսեցւոցն և սադուկեցւոցն. և պատառեցաւ բազմութիւնն։ 8 * Զի սադուկեցիքն ասեն՝ չիք յարութիւն, ոչ հրեշտակ՝ և ոչ հոգի. բայց փարիսեցիքն խոստովանին զերկոսեանսն։

Մատ. 22. 23.

9 * Եւ եղեւ աղաղակ մեծ. յոտն կացին ոմանք 'ի դպրաց անտի, 'ի կողմանէ փարիսեցւոց՝ հակառակէին և ասէին. ոչինչ չարախօսութիւն գտանեմք յառն յայսմիկ. բայց թէ Հոգի խօսեցաւ 'ի դմա՝ կամ հրեշտակ։ 10 * Եւ 'ի բազմանալ ամբոխին՝ երկուցեալ հազարապետն թէ գուցէ ձեղքիցի պօղոս 'ի նոցանէ՝ հրամայեաց զօրականին իջանել յափշտակել զնա 'ի միջոյ նոցա. և ածել 'ի բանակն։ 11 * Եւ 'ի վաղուեան գիշերին եկաց առ նմա Տր, և ասէ. քաջալերեաց, զի որպէս վկայեցեր վասն իմ յեէմ, այնպէս պարտ է քեզ և 'ի Հռոմ վկայել։

Օ.Դ

12 * Եւ իբրեւ այգ եղեւ՝ արարեալ ժողով հրէիցն նզովեցին զանձինս. ոչ ուտել՝ և ոչ ըմպել մինչեւ սպանցեն զպօղոս։ 13 * Եւ էին աւելի քան զքառասուն՝ որոց զայս ընդ միմեանս երդմունս արարեալ էր։ 14 * Որք մատեան առ քահանայապետսն և երիցունս՝ և ասեն. նզովիւք նզովեցաք զանձինս՝ ոչինչ ճաշակել մինչեւ սպանցուք զպօղոս։ 15 * Արդ դուք զգացուցէք հազարապետին հանդերձ ատենիւն. զի իջուսցէ զնա առ ձեզ, որպէս թէ կամիցիք ճշմարտագոյն ինչ գիտել զնմանէ։ և մեք յառաջ քան զմօտիլն նորա պատրաստ իմք 'ի սպանանել զնա։

16 * Եւ լուեալ քեռորդւոյն պօղոսի զդաւաճանութիւնն, եկն եմուտ 'ի բանակ անդր՝ պատմեաց պօղոսի։ 17 * Եւ կոչեալ պօղոսի առ իւր զմի 'ի հարիւրապետաց անտի՝ ասէ. զպատանիս զայս տար առ հազարապետն, զի ունի ինչ պատմել նմա։ 18 * Եւ նորա առեալ զնա տարաւ առ հազարապետն՝ և ասէ. կապեալն պօղոս կոչեաց զիս. և աղաչեաց, զպատանիս զայս ածել առ քեզ. որ ունի ինչ խօսել ընդ քեզ։ 19 * Առեալ զձեռանէ նորա հազարապետին՝ գնաց մեկուսի. հարցանէր, թէ զինչ ունիս խօսել ընդ իս։ 20 * Եւ նա ասէ՝ հրեայք միաբանեցան աղաչել զքեզ. զի 'ի վաղուեան զպօղոս իջուսցես յատեան, իբրեւ թէ կամիցին ինչ ճշմարտագոյնս հարցանել վասն նորա։ 21 * Արդ դու մի անսայցես նց. քանզի դարան գործեալ է նմա 'ի նոցանէ՝ արանց աւելի քան զքառասուն. որք նզովեցին զանձինս ոչ ուտել՝ և ոչ ըմպել՝ մինչեւ սպանցեն զնա. արդ պատրաստ են՝ և սպասեն քում հրամանի։

Օ.Ե

22 * Ապա հազարապետն արձակեաց զպատանին՝ պատուիրեալ մի ումեք ասել, թէ զայս ազդեցուցեր ինձ։

23 * Եւ կոչեաց երկուս 'ի հարիւրապետացն՝ և ասէ. պատրաստեցէք զօրականս երկերիւրս, որպէս զի երթիցեն մինչեւ 'ի կեսարիայ. և հեծեալս եօթանասուն՝ և տիգաւորս երկերիւրս. 24 յերից ժամուց գիշերոյն։ * Եւ գրաստ պատրաստական՝ որպէս զի իջուցեալ 25 զպօղոս ապրեցուսցեն։ * (Երկեաւ, մի գուցէ յափշտակեսցեն զնա հրեայքն, և սպանցեն. և ինքն յետոյ ընդ զրպարտութի կրեսցէ, իբրու թէ առնլոյ իցէ զգանձս.) և առ փեղիքս դա- 26 տաւոր գրեալ թուղթ։ * Որ ունէր զօրինակ զայս։ Կղօդիոս ղիւսիաս առ քաջ դատաւորդ փեղիքս՝ ողջոյն։

27 * Զայրս զայս կալեալ 'ի հրէից՝ և մերձ 'ի սպանանել 'ի նոցանէ. հասեալ 'ի վերայ զօրականօք ապրեցուցի, իմա- 28 ցեալ եթէ հռոմայեցի է։ * Կամեցայ գիտել զվնասն, վն որոյ ամբաստանէին զնմանէ. իջուցի զդա յատեան 29 նց։ * Զոր գտի ամբաստանեալ վն խնդրոյ իրիք օրինաց իւրեանց. և ոչ ինչ արժանի մահու, կամ կապանաց 30 ունէր զվնաս։ * Իբրեւ ազդ եղեւ ինձ սակս նենգութեան յայրդ լինելոյ 'ի նոցանէ՝ յղեցի առ քեզ. զհրաման տուեալ և չարախօսացն խօսել զդմանէ 31 առաջի քո. ողջ լեր։ * Եւ զօրականացն, ըստ հրամանի նր առեալ զպօղոս՝ տարան 'ի գիշերի առ անտիպատ- 32 րոսն։ * Եւ 'ի վաղիւն անդր արձակեաց զհեծեալսն ընդ նմա երթալ՝ դարձան 33 'ի բանակն։ * Նոքա մտին 'ի կեսարիա, և տուեալ զդատաւորն զթուղթն, առաջի կացուցին նորա և զպօղոս։ 34 * Իբրեւ ընթերցաւ՝ եհարց, թէ յորմէ նահանգէ իցէ. և ստուգեալ եթէ 35 'ի կիլիկիէ է, * Լուայց ասէ քեզ՝ յորժամ և չարախօսքն քո եկեսցեն. և հրամայեաց յապարանսն հերովդի պահել զնա։

'ի սպա- նանել

## ԳԼ. ԻԴ.

Օ.Օ.

1 Եւ յետ հինգ աւուրց էջ քահանայապետն անանիա հանդերձ ծերովք ոմամբք. և ճարտարախօսաւ տերտիղաւ ոմամբ. որք և զգացու- 2 ցին դատաւորին վն պօղոսի։ * Եւ 'ի կոչել զնոսա՝ սկսաւ տերտիղոսն ամբաստան լինել և ասել. զբազում խաղաղութի գտեալ է 'ի քէն՝ և իրաց

ուղղութիւն ազգիս այսորիկ քով խնամով։ 3 * Ամիւ և ամ ուրեք շնորհակալք եմք՝ քաջդ փեղիքս՝ ամիւ գոհութեամբ։ 4 * Բայց զի մի աւելի ինչ աշխատ արարից զքեզ, աղաչեմ լսել մեզ կարճ 'ի կարճոյ՝ քոյին հեզութեամբ։ 5 * Զանզի գտաք զայրս զայս ապականիչ և խռովիչ ամենայն հրէից՝ որք են ընդ տիեզերս. և առաջնորդ նազովրեցւոց հերձուածոյն։ 6 * Որ և զտաճարն եւս կամեցաւ պղծել՝ զոր և կալաք. և ըստ մերոց օրինաց դատել կամեցաք։ 7 * Եկեալ լիւսիաս հազարապետ՝ մեծաւ բռնութեամբ 'ի ձեռաց մերոց եհան։ 8 * Հրամայեաց և չարախօսացն նորա գալ առ քեզ. յորմէ դու իսկ բաւական լինիցիս վերստին դատել։ ամի հասու լինել՝ զորոց մեքս ամբաստանեմք զդմանէ։ 9 * Միաբանեցան հրէայքն՝ և ասեն. այդ այդպէս է։ 10 * Պատասխանի ետ պօղոս՝ (յակնարկել նմա դատաւորին խօսիլ։) 'ի բազում ամաց լինիլ զքեզ դատաւոր ազգիս այսորիկ գիտեմ. յօժարութեամբ վն իմոց իրաց պատասխանի առնեմ։ 11 * Զանզի կարող ես գիտել. զի ոչինչ աւելի է իմ քան զաւուրս երկոտասան յորմէհետէ ելի երկիրպագանել յեէմ։ 12 * Եւ ոչ 'ի տաճարի անդ գտին զիս ընդ ումեք խօսեցեալ. և կամ ժողով արարեալ բազմաց։ ոչ 'ի ժողովուրդս։ 13 * Եւ ոչ 'ի քաղաքի։ և ոչ յանդիման առնել կարեն քեզ, վն որոյ այժմդ չարախօսեն զինէն։ 14 * Բայց զայս խոստանամ քեզ՝ եթէ ըստ ճանապարհին, զոր ասեն հերձուած, այնպէս պաշտեմ զհայրենի Ածն, հաւատացեալ ամի՝ որ ինչ յօրէնսն և 'ի մարգարէս գրեալ է։ 15 * Ունիմ զյոյս առ Ած. որում և դոքա իսկ ակնունին՝ թէ յարութիւն լինելոց է արդարոց և մեղաւորաց։ 16 * Յորում և ես իսկ ջանամ. անխիղճ միտս ունիլ առ Ած, և առ մարդիկ յամ ժամ։ 17 * Ի բազում ամաց ողորմութիւնս եկի առնել յազգդ իմ։ և տուրս պատարագս։ 18 * ‖Որովք գտին զիս սրբեալ 'ի տաճարին. ոչ բազմօք՝ և ոչ ամբոխիւ։ 19 * Ոմանք յասիացւոց անտի հրէայք՝ որոց պարտ էր գալ առաջի քո՝ և ամբաստան լինել՝ եթէ ունիցին ինչ զինէն։ 20 * Եւ կամ ինքն եանք սոքա ասասցեն զինչ գտին յիս անիրաւութիւն, մինչդեռ կայի յատենին։ 21 * Բայց միայն վն միոյ բարբառոյս այսորիկ՝ զոր աղաղակեցի մինչ կայի 'ի մէջ նոցա։‖ եթէ վն յարութեան մեռելոց դատիմ ես այսօր 'ի ձէնջ։ 22 * Եւ յապաղեաց զնոսա փեղիքս զի

խոստա- վանեմ

‖ Վեր. 21. 26.

‖ Վեր. 23. 6.

ստուգագոյնս գիտէր վն ճանապարհին։ ասէ՝ յորժամ լիւսիաս հազարապետ իջցէ այսր՝ տեղեկացայց վն ձեր։ 23 * Հրամայեաց հարիւրապետին պահել զնա. և ունել յընդարձակի. և մի զոք յիւրոց անտի արգելուլ 'ի պաշտելոյ զնա։ 24 * Եւ յետ աւուրց ինչ եկն փեղիքս հանդերձ դրուսիղաւ կնաւ իւրով, որ էր հրէայ։ կոչեաց զպօղոս՝ և լուաւ 'ի նմանէ՝ վն որ 'ի Քս Յս հաւատոյն։ 25 * Եւ 'ի խօսելն նորա վն արդարութեան՝ և ժուժկալութեան՝ և հանդերձելոյ դատաստանին. զահի հարեալ փեղիքս, ետ պատասխանի. դու առայժմ երթ՝ և յորժամ լինիցի, կոչեցից զքեզ։ 26 * Միանգամայն և ակն ունէր թէ տացի ինչ նմա 'ի պօղոսէ։ վասն որոյ և ստէպ կոչեալ զնա՝ խօսէր ընդ նմա։

27 * Եւ 'ի կատարել երկուց ամաց՝ եկն փոխանակ փեղիքսի, փեստոս պորկիոս։ իբրև կամեցաւ շնորհս առնել հրէիցն փեղիքս, եթող զպօղոս կապեալ։

## ԳԼ. ԻԵ.

1 Փեստոս իբրև եհաս յիշխանութիւն. յետ երից աւուրց ել յեէմ 'ի կեսարիոյ։ 2 * Եւ զգացուցին նմա քահանայապետքն, և գլխաւորք հրէիցն զպօղոսէ։ 3 * Եւ աղաչէին խնդրել շնորհս 'ի նմանէ. զի կոչեսցէ զնա յեէմ։ դարան գործեալ սպանանել զնա 'ի ճանապարհին։ 4 * Իսկ փեստոս արար պատասխանի պահել զնա 'ի կեսարիայ. թէ ինքն իսկ ընդհուպ անդր երթալոց է։ 5 * Եւ որք 'ի ձէնջ կարողք իցեն՝ ասէ. ընդ իս իջցեն. և եթէ իցէ ինչ յառնն վնաս՝ ամբաստան լինիցին զնմանէ։ 6 * Եւ լեալ անդ աւուրս ոչ աւելի քան զութ կամ զտասն, եկն, էջ 'ի կեսարիայ։ և 'ի վաղիւն անդր նստեալ յատենի, հրամայեաց ածել զպօղոս։ 7 * Եւ իբրև եկն՝ կային շուրջ զնովաւ՝ որք յեէմէ իջեալ էին հրէայքն։ բազում և ծանր վնասս դնէին՝ 8 զոր ոչ կարէին ցուցանել։ * Զանզի առնէր զպատասխանի պօղոս, եթէ ոչ յօրէնս հրէից՝ և ոչ 'ի տաճարն, և ոչ 'ի կայսր՝ ինչ վնասակար եմ։ 9 * Բայց փեստոս կամեցեալ հրէիցն շնորհս առնել՝ պատասխանի ետ պօղոսի՝ և ասէ։ կամիս յեէմ ելանել՝ և անդ վն դոցին իրաց դատիլ առաջի իմ։ 10 * Եւ ասէ պօղոս՝ յատենի կայսեր հասեալ կամ, ուր պարտ է ինձ դատիլ։ հրէից ինչ չեմ վնասակար. ոպ 11 և դու իսկ քաջ գիտես։ * Արդ թէ վնա-

վնասակար իցեմ, և արժանի ինչ մա
հու գործեցի, ոչ զանգիտեմ 'ի մե
ռանելոյ։ իսկ եթէ ոչինչ զորոց սոքա ամ
բաստան լինին զինէն, ոչոք կարէ զիս
դոցա շնորհել. 'ի կայսր բողոքեմ։
12 * Յայնժամ փեստոս խօսեցեալ ընդ
խորհրդակցին' արար զպատասխանի.
'ի կայսր բողոքեցեր' առ կայսր եր
թիջիր։

ԻԲ

13 * Իբրև անցին աւուրք ինչ' ագրիպ
պաս արքայ' և բերենիկէ եկին 'ի կե
սարիա' յողջոյն փեստոսի։ 14 * Եւ իբրև
աւուրս բազումս հանէին անդ, փես
տոս զերկոյց արքային զպօղոսէ' և ասէ։
այր մի է աստ մնացեալ կապեալ 'ի փե
լիքսէ։ 15 * Վասն որոյ իբրև չոքայ յերէմ,
զգայուցին ինձ քահանայապետքն և
գլխաւորք հրէից' խնդրէին յինէն
առնել նմա պատուհաս։ 16 * Որոց ետու
պատասխանի. եթէ չէ օրէն հռօմայեց
ւոց շնորհել ումեք զոք, մինչև ամբաս
տանեալն յանդիման ունիցի զդատա
խազսն. և տեղի պատասխանւոյ առ
նուցու վասն ամբաստանութեան։ 17 * Եւ
իբրև եկին այսր, ոչինչ յապաղեցի.
այլ 'ի վաղիւն նստեալ յատենի, հրա
մայեցի ածել զայրն։ 18 * Վասն որոյ մա
տուցեալ ամբաստանքն, և ոչ մի ինչ
վնաս չարութեան 'ի մէջ բերէին' զորոց
եսն կարծէի։ 19 * Բայց խնդիրս ինչ' զորս
վասն իւրեանց պաշտաման ունէին ընդ
նմա. և վասն Յի ուրուեմն մեռելոյ. զոր
մէ ասէր պօղոս թէ կենդանի է։
20 * Իբրև յանհնարս մտի ես վասն այսպի
սեաց խնդրոյ քննութեան. ասեմ, եթէ
կամիցի երթալ յերէմ, և անդ դատիլ
վասն նոցին իրաց։ 21 * Բայց 'ի պօղոսի
բողոքելն' զի պահեսցի 'ի քաջի արանցն
յանդիմանութիւն, հրամայեցի պահել
զնա' մինչև տաց տանիլ զնա առ
կայսր։ 22 * Ագրիպպաս ցփեստոս ասէ։
կամէի և ես լսել առնն։ և նա ասէ'
'ի վաղիւ լուիցես։

ԻԳ

23 * Եւ 'ի վաղիւ անդր իբրև եկն ագ
րիպպաս' և բերենիկէ' բազում և
երևելի սպասու։ և մտին յատեանն
հանդերձ հազարապետօքն. և արամբք
պատուաւորօք քաղաքին։ և հրամայեաց
փեստոսի' ածին զպօղոս։ 24 * Եւ ասէ
փեստոս, արքայ ագրիպպաս' և ամ
արք' որք ընդ մեզ էք. տեսանէք զսա'
վասն սորա ամենայն ժողովք հրէից ամ
բաստան եղեն ինձ յերէմ և աստ։ աղա
ղակէին' թէ չէ պարտ դմա կեալ։
25 * Բայց ես 'ի վերայ հասի թէ ոչինչ է
դորա արժանի մահու գործեալ։ և
դորա ինքնին բողոք կալեալ առ քաջ
արանցն, խորհեցայ յղել։ 26 * Վասն որոյ
ստուգութիւն ինչ գրել տեառն իմում
ոչ ունիմ։ վասն այնորիկ ածի զդա առա
ջի ձեր' և մանաւանդ առաջի քո ար
քայ ագրիպպաս։ որպէս զի վերստին
քննեալ մարթացից ինչ գրել։
27 * Վասնզի անպատեհ ինձ թուի ինձ'
տալ տանիլ զկապեալ մի, և զոչինչ
վնաս զնմանէ նշանակել։

## ԳԼ. ԻԶ.

1 Եւ ագրիպպաս ասէ ցպօղոս, հրա
մայեալ է քեզ' վասն քո խօսել։
յայնժամ պօղոսի ձգեալ զձեռն' առ
նէր զպատասխանի։ 2 * Վասն ամ ամբաս
տանութեան հրէից զինէն' արքայ ա
գրիպպա' համարիմ զանձն երանելի.
զի քո առաջի այսօր տալոց եմ զպա
տասխանի։ 3 * Մանաւանդ զի գիտակ
ես իսկ ամ կրօնից և խնդրոյ հրէից։
վասն որոյ աղաչեմ երկայնմտութեամբ լսել
ինձ։ 4 * Վասնզի զկենաց իմոց' որ 'ի
մանկութենէ, 'ի սկզբանէ լեալ յազգի
իմում յերէմ, տեղեակ են ամ հրեայք։
5 * Յառաջագոյն գիտեն 'ի վաղուց հե
տէ' (եթէ կամիցին վկայել։) զի ըստ
ճշմարտագոյն կրօնից օրինացն մերոց
կեցեալ եմ փարիսեցի։ 6 * Եւ արդ վասն
յուսոյն' որ առ հարսն մեր եղելոց
աւետեացն յԱյ' դատեալ կամ յա
տենի։ 7 * Յոր երկոտասան ազգատոհմս
մեր անպակաս զցայգ և զցերեկ
պաշտեալ ակն ունին հասանել։ վասն
որոյ յուսոյ ամբաստանիմ արքայ 'ի
հրէից։ 8 * Զի՞նչ անհաւատ թուի ձեզ'
եթէ Այ զմեռեալս յարուցանէ։
9 * Ես իսկ ինքնին պատշաճ համարէի'
զանուն ինչ հակառակ անուանն
Յի նազովրեցւոյ գործել։ 10 * ‖Զոր և
արարի իսկ յերէմ։ և զբազումս 'ի սր
բոցն ես բանտարգել առնէի. 'ի քա
հանայապետիցն առեալ զիշխանութիւն.
և սպանանելոցն նոցա բերէի զհամար։
11 * Եւ ըստ ամ ժողովրդոցն բազում
անգամ պատժեալ զնոսա բռնադատէի
հայհոյել։ առաւել ևս մոլեալ 'ի վերայ
նոցա' հալածէի մինչև յարտաքին քա
ղաքսն։ 12 * ‖Որովք գնացեալ 'ի դամաս
կոս' իշխանութեամբ և հրամանօք քահա
նայապետիցն։ 13 * Զմիջաւուրբն 'ի ճա
նապարհի տեսի' արքայ' յերկնից առ
աւել քան զլուսաւորութիւն արեգական
ծագեալ զինև լոյս։ և զնոքօք' որք ընդ
իմն երթային։ 14 * Եւ ամենեցուն մեր
անկանել յերկիր, լուայ զձայն, որ ա
սէր ցիս' հեբրայեցւոց բարբառով.
սաւուղ սաւուղ զի՞ հալածես զիս։
խիստ է քեզ ընդ գէմ խթանի աքացել։
15 * Եւ ես ասեմ, ո՞ ես Տր։ և Տր ասէ'
ես

‖Վեր. 8. 3.

‖Վեր. 9. 2.

16 ես եմ Յ՟ս զոր դու հալածես։ *Այլ արի, և կաց ՚ի վ՟ն ոտից քոց. զի վ՟ն այսորիկ երևեցայ քեզ՝ առնուլ զքեզ ՚ի ձեռն պաշտօնեայ և վկայ՝ որոց տեսերդ զիս. և որում երևեցայց քեզ։

17 *Փրկել զքեզ ՚ի ժողովրդենէդ՝ և ՚ի հեթանոսաց, յորս ես առաքեցից զքեզ։

18 *Բանալ զաչս նո՟ց. դարձուցանել ՚ի խաւարէ ՚ի լոյս. և յիշխանութենէ սատանայի յԱ՟Ծ. առնուլ նո՟ց զթողութի մեղաց. և զվիճակ ընդ սրբս՝ հաւատովքն որ յիս։

19 *Ուստի ո՛րքայ ագրիպպաս՝ ոչ եղէ անհաւան երկնաւոր տեսլեանն։

Վեր. 9. 20.

20 *Այլ նախ որոց ՚ի դամասկոս և յե՟ղմ էին. և ը՟ ա՟մ գաւառս հրէաստանի, և ՚ի հեթանոսս՝ զղջանալ՝ և դառնալ պատմեցի յԱ՟Ծ կենդանի. արժանի ապաշխարութե գործս գործել։

Վեր. 21. 32.

21 *Վ՟ն այսորիկ հրէից կալեալ զիս ՚ի տաճարին, կամէին սպանանել։

22 *Օգնութի հասեալ առ յԱ՟Յ՝ մինչև ցայսօր կացի վկայել փոքու և մեծի. ոչինչ արտաքոյ ասել՝ քան զոր մարգարէքն և մովսէս խօսեցան զհանդերձելոց լինելոյ։

23 *Եթէ չարչարելոց է Ք՟ս. եթէ առաջին ՚ի յարութե մեռելոց՝ լոյս պատմելոց է ժողովրդեանն՝ և հեթանոսաց։

Խ՟Գ

24 *Եւ նո՟ր զայս պատասխանի տուեալ, փեստոս ՚ի ձայն մեծ՝ ասէ. մոլիս պօղէ. բազում դպրութիւնքդ զքեզ ՚ի մոլորութի դարձուցանեն։

25 *Իսկ պօղոս ասէ՝ ոչ մոլիմ, քաջդ փեստոս. զցածութե և զճշմարտութե բանս բարբառիմ։

26 *Գիտակ իսկ է այսոցիկ արքայ. ընդ որում և համարձակեալդ խօսիմ. քանզի ծածկել ՚ի քէն իմիք ՚ի սոցանէ՝ չառնում յանձն. զի ոչ եթէ յանկեան ուրեք գործեալ իցէ այս։

27 *Հաւատա՞ս արքայ ագրիպպաս մարգարէից. գիտեմ զի հաւատաս։

28 *Եւ ասէ ագրիպպաս ցպօղոս, փոքու իմն հաւանեցուցանես զիս լինել քրիստոնեայ։

29 *Եւ պօղոս ասէ՝ խնդրէի յԱ՟Յ՝ և փոքու՝ և մեծաւ՝ ոչ միայն զքեզ՝ այլ զամենեսեան՝ ոյք լսեն ինձ այսօր՝ լինել այսպիսի՝ ո՟պ և ես եմ, բաց ՚ի կապանաց աստի։

30 *Յոտն եկաց արքայն՝ և դատաւորն՝ և բերենիկէ. և որք ընդ նոսայն նստէին։

31 *Եւ իբրև գնացին, խօսէին ընդ միմեանս և ասէին. թէ ոչինչ արժանի մահու կամ կապանաց գործէ այրս այս։

32 *Իսկ ագրիպպաս ցփեստոս ասէ. արձակել մարթ էր զայրս զայս՝ եթէ ոչ էր բողոքեալ ՚ի կայսր։

## ԳԼ: ԻԷ

1 Իբրև հրամայեցաւ մեզ նաւել յիտալիա. տային զպօղոս՝ և զայլս ոմանս կապեալս՝ ցհարիւրապետ մի, որում անուն էր յուլիոս՝ սեբաստեան գնդին։

Բ. Կոր. 11. 25.

2 *Եւ ելեալ ՚ի նաւ մի ադրամիտացի, որ երթալոց էր ՚ի կողմանս ասիացւոց՝ գնացաք. էր ընդ մեզ և արիստարքոս՝ մակեդոնն թեսաղոնիկեցի։

3 *Եւ ՚ի վաղիւն անդր իջաք ՚ի սիդոն. և զմարդասիրութի ցուցեալ յուլիոսի առ պօղոս, հրամայեաց առ բարեկամս երթալ՝ և զդարման գտանել։

4 *Եւ անտի ելեալ խոնարհագոյն նաւեցաք ՚ի կիպրոս՝ վ՟ն հողմոյն ընդդէմ լինելոյ։

5 *Յանժամ ընդ մէջ ծովուն կիլիկեայ և պամփիլեայ նաւեալ՝ իջաք ՚ի սմիւռնայ լիկիացւոց։

6 *Եւ անդ գտեալ հարիւրապետին զնաւ մի աղէքսանդրացի, որ երթայր յիտալիա՝ եմոյծ զմեզ անդր։

7 *Եւ ՚ի բազում աւուրս ծանրանաւեալք՝ հազիւ հասաք առ գնիդաւ. և ՚ի չթողացուցանել զմեզ հողմոյն, նաւեցաք ՚ի խոնարհագոյն ՚ի կրետէ առ սաղմոնաւ։

8 *Հազիւ անցեալ առ նովաւ՝ եկաք ՚ի տեղի ինչ՝ որ կոչիւր գեղեցիկ նաւահանգիստ. յոր հուպ էր քաղաքն լասեայ։

9 *Եւ իբրև բազում ժամանակք անցանէին. և սխալ ևս լինէր նաւելոյն. և վասն այնր ինչ և պահոցն անցանելոյ՝ տայր խրատ պօղոս։

10 *Եւ ասէր ցնոսա. արք տեսանեմ զի թշնամանօք և բազմաւ վնասու՝ ոչ միայն բեռինդ և նաւիդ՝ այլ և անձանց մերոց լինելոց է նաւարկութիւն։

11 *Իսկ հարիւրապետն նաւապետին և նաւավարին առաւել անսայր՝ քան բանիցն պօղոսի։

12 *Իբրև դժպատեհ իմն թուէր նաւահանգիստն առ ՚ի ձմերել, բազումք խորհեցան գնալ անտի. թերևս կարասցեն հասանել ՚ի փիւնիկէ՝ ձմերել ՚ի նաւահանգստին կրետացւոց. որ հայէր ընդ հարաւ կողմն, և ընդ աշխարհն։

13 *Եւ ՚ի շնչել հարաւոյն, համարեցան ուր դիմեալն էին հասանել. և եկեալ՝ մօտ անցանէին զկրետեաւ։

14 *Եւ ոչ յետ բազում ժամուց՝ անկաւ զնովաւ հողմ ուռուցիկ՝ որ կոչի եւրակիկլոն։

15 *Ընդ յափշտակել նաւին, և ՚ի չհանդուրժել ընդդէմ հողմոյն, թոյլ տուեալ երթայաք և գայաք։

16 *Ի կղզի ինչ դիմեալ՝ որ կոչիւր կղօդա, հազիւ կարացաք ըմբռնել զմակոյկն։

17 *Զոր առեալ՝ յօգնականութի կապէին ընդ նաւն. երկուցեալք եթէ գուցէ ՚ի յորձանուտն անկա_

կանեցին . և իջուցեալ զառագաստն, այնպէս երթային և գային ։ 18 * Եւ 'ի սաստկագոյն վշտանալոյն մերոյ՝ 'ի վաղիւն անդր զկարասին ընկեցին առ նէին ։ 19 * Եւ յերիր աւուր ընդ իւրեանց ձեռն՝ զգործի նաւին ընկեցին ։ 20 * Եւ ոչ արեւ՝ և ոչ աստեղք երեւէին 'ի բա զում աւուրս, և ձմեռն ոչ սակաւ կայր 'ի վերայ . ապա բառնայր ամենայն յոյս փրկու թեան մերոյ ։ 21 * Եւ զի 'ի բազում աւուրս նօթիք էին ։ յայնժամ պօղոս կացեալ 'ի մէջ նոցա՝ ասէ . պարտ էր ձեզ ով արք՝ անսալ ինձ, և ոչ ելանել 'ի կրե տեայ՝ և շահել զվնաս զայս և զնաս ։ 22 * Եւ արդ՝ խրատեմ զձեզ քաջալերել՝ զի վնաս անձին և ոչ միում 'ի ձէնջ լի նիցի , բայց 'ի նաւէդ ։ 23 * Քանզի երեւե ցաւ ինձ յայսմ գիշերի հրեշտակ ԱԾոյն՝ որոյ եմն եմ, և պաշտեմ զնա ։ 24 * Եւ ասէ՝ մի երկնչիր պօղէ . կայսեր ևս պարտ է քեզ յանդիման լինել . և ահա շնորհեալ է քեզ ԱԾ զամենեսեան , որք են ընդ քեզ 'ի նաւիդ ։ 25 * Վասն այսորիկ քաջալերացարուք արք . զի հաւ ատամ յԱԾ, թէ այսպէս լինի՝ զոր օրինակ խօսեցաւ ընդ իս ։ 26 * Բայց 'ի կղզի ինչ հասանի մեզ անկանել ։

Ի. Օ. 27 * Եւ իբրեւ չորեքտասաներորդ գիշեր լի նէր՝ մինչդեռ ծփէաք 'ի հանդրին ադ րիանդս , 'ի մէջ գիշերին կարծէին նաւավարքն եթէ հասեալ իցեն յաշ խարհ ուրեք ։ 28 * Եւ ընկեցեալ զգունտսն՝ գտին գիրկս քսան . և սակաւ ինչ դա դարեալ՝ դարձեալ ընկեցին՝ և գտին գիրկս հնգետասան ։ 29 * Զահի հա րեալ թէ գուցէ 'ի խիստ ինչ տեղի անկանիցին . յետուստ կողմանէ ընկե ցին խարիսխս չորս . ըղձանային այ գուն լինելոյ ։ 30 * Բայց նաւավարքն խնդրէին փախչել 'ի նաւէ անտի . և իջուցեալ զկուրն 'ի ծով անդր՝ պատ ճառանօք՝ իբր թէ յառաջոյ կողմանէ խարիսխս ձգելոց իցեն ։ 31 * Ասէ պօղոս ցհարիւրապետն և ցզօրականսն . եթէ ոչ դոքա մնան 'ի նաւիս՝ դուք ապրել ոչ կարէք ։ 32 * Յայնժամ զօրականքն հատին զլարս կրին՝ և 'ի բաց ընկեցին ։ 33 * Եւ մինչդեռ այգն կամէր լինել՝ աղա չէր պօղոս զամենեսեան առնուլ զկե րակուր . ասէ՝ այս չորեքտասաներորդ օր է . որում ակն ունիք նօթի կատա րել . և չէ ինչ ճաշակեալ ։ 34 * Վասն որոյ աղաչեմ զձեզ՝ ճաշակել զկերակուր՝ զի այն իսկ վասն ձերոյ փրկութեան է . զի ոչ ուրուք 'ի ձէնջ մազ մի 'ի գլխոյ կո րիցէ ։ 35 * Եւ իբրեւ ասաց զայս , առեալ զհաց՝ գոհացաւ զԱԾ առաջի ամենե ցուն . եբեկ , և սկսաւ ուտել ։

36 * Եւ քաջալերեցան ամենեքին , և նոքա առին զկերակուր ։ 37 * Եւ էաք ամենայն հո գիք 'ի նաւին՝ երկերիւր եօթանասուն և վեց ։ 38 * Իբրեւ յագեցան կերակրով , թեթեւացուցին զնաւն՝ թափեալ զցո րեանն 'ի ծովն ։ 39 * Եւ իբրեւ այգ եղեւ՝ զերկիրն ոչ ճանաչէին . բայց զգոգ մի նշմարէին , թէ առ ափն ծովուն իցէ . յոր խորհէին եթէ հնար ինչ իցէ զեր ծուցանել զնաւն ։ 40 * Եւ զխարիսխսն հատեալ՝ ընկեցին 'ի ծովն , թուլացու ցին զխառնելիս թեւոցն , և 'ի բաց առին զառագաստն . և ետուն հողմոյն յափնկոյս ծովուն ։ 41 * Անկեալ 'ի տե ղի մի երկծով՝ թիւրեցին զնաւն . և առաջին կողմն նաւին խրեալ՝ անշարժ մնայր . և յետին կողմն քակէր 'ի բռ նութենէ ։ 42 * Եւ զօրականացն խոր հուրդ արարեալ՝ զի զկապեալսն սպան ցեն , և մի ոք լողիցէ , և փախիցէ ։ 43 * Եւ հարիւրապետն քանզի կամեցաւ ապրեցուցանել զպօղոս՝ արգել զնա 'ի խորհրդոյն . հրամայեաց զի որք կա րօղք իցեն լողել՝ անկանիցին , և 'ի ցա մաք ելանիցեն . և զայլսն՝ զոմս 'ի տախ տակս ։ 44 * Եւ զոմս յայլ ինչ կահ 'ի նաւէ անտի . և այսպէս եղեւ ամենե ցուն փրկանել յերկիր ։

'ի բռնութէ ալեաց

## Գլ. ԻԸ.

1 Եւ ապրեալք՝ յայնժամ գիտացաք թէ մելիտինէ էր անուն կղզւոյն . բայց բարբարոսքն շնորհեցին ոչ սա կաւ մարդասիրութիւն մեզ ։ 2 * Քանզի լուցին զխարոյկ՝ և ընկալան զամենե սին զմեզ վասն անձրեւին , որ ստիպէր՝ և վասն ցրտոյն ։ 3 * Եւ 'ի ժողովել պօ ղոսի զխուիւ ինչ բազում , և դնել 'ի վերայ խարուկին , իժ մի 'ի ջերմու թենէն ելեալ՝ կալաւ զձեռանէ նորա ։ 4 * Եւ իբրեւ տեսին բարբարոսքն կա խեալ զգազանն զձեռանէ նորա , ասէին ցմիմեանս . ուրեմն սպանօղ է այր այս՝ որ թէպէտ ապրեցաւ 'ի ծովէն , իրաւ ունքն ոչ ետուն կեալ ։ 5 * Եւ նա թօ թափեալ զգազանն 'ի հուրն , եղեւ նմա 6 չար և ոչինչ ։ * Եւ նոքա ակն ունէին նմա այտնլոյ՝ կամ անկանելոյ՝ և յան կարծակի մեռանելոյ ։ իբրեւ շատ ակն կալեալ , և տեսանէին՝ թէ ոչինչ վնաս եղեւ նմա՝ դարձեալ դարձուցեալ զբանն՝ 7 ասէին թէ աստուած ոմն է ։ * Եւ շուրջ զտեղեաւն զայնուիկ էին գիւղք գլխաւորի կղզւոյն՝ որում անուն էր պուպղիոս . որ էառ զմեզ յերաշխի զե րիս աւուրս՝ և սիրով ընկալաւ ։
8 * Եւ եղեւ հօրն պուպղեայ 'ի ջերմն , և յախտ թանչից հիւանդանալ՝ դնիլ . հիւանդոտ
ու ցեղ դնել

առ որ մտեալ պօղոս՝ և կացեալ յա-
ղօթս՝ եդ զձեռն, և բժշկեաց զնա։
9 * Եւ՛ իբրև այս եղև, և այլք հի՛-
ւանդք՝ որք էին 'ի կղզւոջն, գային և
10 բժշկէին։ * Որք և բազմօք պատուօք
պատուեցին զմեզ. և իբրև գնացաք՝
ետուն՝ որ ինչ պէտքն էին։

ԻԸ

11 * Եւ՛ յետ երից ամսոց ելաք 'ի նաւ մի
աղեքսանդրացի՝ որ ձմերեալ էր 'ի
կղզւոջն նշանաւոր դիոսկուրացւոց։
12 * Եւ՛ իջեալ 'ի սիրակուսայ՝ եղեաք
13 անդ աւուրս երիս։ * Ուստի գնացեալ
հասաք 'ի հռեգիոն. և յետ աւուր միոյ
'ի շնչել հարաւոյն, երկօրեայք եկաք
14 'ի պատիոլոս։ * Ուր և գտաք եղբարս՝
աղաչեցեալք 'ի նոցանէ լինել † աւուրս
եօթն. և ապա ելաք 'ի հռոմ։

† առ նս

15 * Եւ՛ անտի լուեալ եղբարց զմէնջ՝
ելին ընդ առաջ մեր մինչև յորդոս-
տայն ապփեայ՝ և երիցն կրպակաց.
զորս տեսեալ պօղոսի՝ գոհացաւ զայ՝
16 և քաջալերեցաւ։ * Եւ՛ իբրև մտաք
'ի հռոմ, հրամայեցաւ պօղոսի լինել
առանձինն հանդերձ զինուորաւն՝ պա
17 հապանաւ իւրով։ * Եւ՛ եղև յետ երից
աւուրց՝ կոչել նմա զհրէիցն գլխա-
ւորս. և իբրև եկին, ասէ ցնս. ես՝ արք
եղբարք՝ ոչինչ հակառակ գործեալ
ժողովրդեանն կամ կրօնիցն հայրե-
նեաց. կապեալ յեմ մատնեցայ 'ի
18 ձեռս հռովմայեցւոց։ * Որք իբրև դա
տեցին զիս՝ կամէին արձակել. վն և
ոչ զմի ինչ վնաս մահու գտանելոյ յիս։
19 * 'Ի հակառակել հրէիցն, հարկ եղև
բողոքել 'ի կայսր. իբրև ոչ թէ զազ
գէն իմն ունէի ինչ չարախօսել։
20 * Վն այսր պատճառանաց աղաչեցի
զձեզ՝ տեսանել և խօսիլ. քանզի վասն
յուսոյն իղի կամ 'ի շղթայսս յայսոսիկ։

21 * Եւ՛ նոքա ասեն ցնա. մեք ոչ թուղթս
ինչ վասն քո ընկալաք 'ի հրէաստանէ.
և ոչ եկեալ ոք յեղբարց պատմեաց՝
կամ խօսեցաւ ինչ վն քո զչարութի։
22 * Բայց աղաչեմք 'ի քէն լսել թէ զինչ
խորհիցիս. զի վն հերձուածոյդ այդո
րիկ յայտնի իսկ է մեզ. զի ամենայն
ուրեք զհակառակութի կրէ։
23 * Ժամ եդեալ նմա օր մի, եկին 'ի
վանն առ նա բազումք. որոց պատմէր
վկայութբ զարքայութին Այ. և
հաւանեցուցանէր զնս վասն Յի. յօրէ
նացն մովսէսի՝ և 'ի մարգարէից՝ յայ-
24 գուհէ մինչև ցերեկոյ։ * Եւ՛ ոմանք
հաւանէին. և կէսք բանիցն չհաւա-
25 տային։ * Եւ՛ անմիաբանք լեալք 'ի մի
մեանց՝ արձակէին, յասելն պօղոսի
բան մի. թէ բարւոք խօսեցաւ հոգին
սուրբ 'ի ձեռն եսայեայ մարգարէի
26 առ հարսն մեր։ * ‖ Եւ՛ ասէ՝ երթ առ
ժողովուրդն, և ասասցես. լսելով լուի
ջիք և մի իմասջիք. և տեսանելով տես
27 ջիք՝ և մի տեսջիք։ * Զի թանձրացաւ
սիրտ ժողովրդեանն այնորիկ՝ և ական
ջօք իւրեանց ծանր լուան. և զաչս իւրց
կափուցին. զի մի երբէք տեսանիցեն
աչօք, և ականջօք լուիցեն. և սրտիւք
իմասցին, և դարձցին, և բժշկեցից զնս։
28 * Եւ՛ արդ՝ յայտնի լիցի ձեզ՝ զի հեթա
նոսաց առաքեցաւ փրկութի Այ՝ նո-
29 քին և լուիցեն։ * Եւ՛ իբրև զայս ասաց՝
արտաքս գնացին 'ի նմանէ հրէայքն,
որք ունէին 'ի մէջ իւրեանց զբազում
30 խնդիրս։ * Եւ եղև զերկամ մի՝ բն-
31 վանդակ իւրով վարձու։ * Եւ՛ ըն-
դունէր զամենեսեան. որք մտանէին
32 առ նա։ * Քարոզէր զարքայութին
Այ՝ և ուսուցանէր վն Տն Յի Քի,
անխափան ամ համարձակութբ։

‖ Եսայ. 6. 9. Մատ. 13. 14. Մարկ. 4. 12. Ղուկ. 8. 10. Յովհ. 12. 40. Հռովմ. 11. 8.



Յանկարծակի շուրջ զնովաւ փայլատակեցաւ լոյս յերկնից, և անկեալ յերկիր՝ լուաւ։ Գործ. 9. 3.



Պօղոս ծառայ Յի Քի կոչեցեալ առաքեալ՝ որոշեալ յաւետարանն Այ։ Հռով. 1. 1.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ՀՌՕՄԱՅԵՑԻՍՆ։

Գլուխ Առաջներորդ։

ԱԲ



1 ՊՕՂՈՍ ԾԱՌԱՅ ՅԻ ՔԻ, կոչեցեալ առաքեալ. ‖ որոշեալ յաւետարանն Այ։ 2 * Զոր յառաջ խոստացաւ ՚ի ձեռն մարգարէից իւրոց՝ գրովք սրբովք։ 3 * Վասն Որդւոյ իւրոյ եղելոյ ՚ի զաւակէ Դաւթի ըստ մարմնոյ։ 4 * Սահմանելոյ Որդւոյն Այ զօրութեամբ ըստ Հոգւոյն սրբութեան. ՚ի յարութենէ մեռելոց Յի Քի Տն մերոյ։ 5 * Որով ընկալաք շնորհս և զառաքելութիւն ՚ի հնազանդութիւն հաւատոյ յամ հեթանոսս վն անուան նորա։ 6 * Ընդ որս և դուք էք 7 կոչեցեալք Յի Քի։ * Ամենեցուն որոց էք ՚ի Հռովմ, սիրելեաց Այ՝ կոչեցելոց սրբոց։ Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱյ՝ Հօրէ մերմէ՝ և ՚ի 8 Տէ Յէ Քէ։ * Նախ գոհանամ զԱյ իմոյ ՚ի ձեռն Յի Քի վն ձեր ամենեցուն. զի հաւատք ձեր պատմեալ են 9 ընդ ամենայն աշխարհ։ * Վկայ է ինձ Այ, զոր պաշտեմն հոգւովս իմով 10 յաւետարանի Որդւոյ նր։ * Թէ որպ զյիշատակս ձեր առնեմ յամ ժամ յաղօթս իմ, աղաչելով՝ զի թերևս երբեք յաջողեսցի ինձ կամօքն Այ գալ 11 առ ձեզ։ * Քանզի անձկացեալ եմ տեսանել զձեզ. զի փոխեցից ՚ի ձեզ շնորհս ինչ հոգևորս՝ առ ՚ի հաստա-12 տել զձեզ։ * Այս ինքն է, մխիթարակից լինել ձեզ. վն ընդ միմեանս իմոյ 13 և ձերդ հաւատոց։ * Ոչ կամիմ եթէ ագէտք իցէք եղբարք. զի բազում ան-

Գործ. 13. 2.

անգամ յօժարեցայ գալ առ ձեզ՝ (և արգելայ մինչև ցայժմ։) զի և ՚ի ձեզ գտից զպտուղ ինչ որպէս և յայլ հեթանոսս։ * Յունաց և բարբարոսաց՝ իմաստնոց և անմտից պարտապան եմ։ * Այնպէս (որչափ իմով սանն) յօժարութիւն և ձեզ՝ որք ՚ի Հռովմ էք՝ աւետարանել։ * Զի ոչ եթէ ամօթ ինչ համարիմ զաւետարանն. քանզի զօրութիւն Ա՟յ է ՚ի փրկութիւն ամ՟ հաւատացելոց. նախ Հրէի, և ապա հեթանոսի։ * Զի արդարութիւն Ա՟յ նովաւ յայտնի ՚ի հաւատոյ ՚ի հաւատս. որպէս և գրեալ է։ ‖ Թէ արդարն ՚ի հաւատոյ կեցցէ։ * Քանզի յայտնեալ է բարկութիւն ա՟յ յերկնից ՚ի վ՟ր ամ՟ ամբարշտութեան և անիրաւութեան մարդկան. որք զճշմարտութիւն ա՟յ անիրաւութեամբ ունին։ * Զի գիտութիւն ա՟յ յայտնի է ՚ի ն՟ս. քանզի Ա՟Ծ իսկ յայտնեաց ն՟ց։ * Զի աներևոյթք ն՟ր ՚ի սկզբանէ աշխարհի, արարածովք իմացեալ տեսանին. այս ինքն է՝ մշտնջենաւորութիւն, և զօրութիւն, և Ա՟Ծութիւն նորա. զի ոչ գտանիցեն ամենևին տալ պատասխանի։ * ‖ Զի ծանեան զԱ՟Ծ, և ոչ իբրև զԱ՟Ծ փառաւորեցին, կամ գոհացան. այլ նանրացան ՚ի խորհուրդս իւրեանց. և խաւարեցան անմտութիւնք սրտից ն՟ց։ * Զանձինս առ իմաստունս ունէին՝ յիմարեցան։ * Եւ փոխեցին զփառս անեղծին ա՟յ ՚ի նմանութիւն պատկերի՝ եղծանելւոյ մարդոյ՝ և թռչնոց՝ և չորքոտանեաց՝ և սողնոց։ * Վ՟ս որոյ մատնեաց զնոսա Ա՟Ծ ՚ի ցանկութիւն սրտից ն՟ց ՚ի պղծութիւն. անարգել զմարմինս իւրեանց յանձինս իւրեանց։ * Որք փոխանակեցին զճշմարտութիւն ա՟յ ընդ ստութեան. հնազանդեցան՝ և պաշտեցին զարարածս, և ոչ զարարիչն. որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։ * Վ՟ս այսորիկ մատնեաց զնոսա Ա՟Ծ ՚ի կիրս անարգութեան. զի էգք նոցա փոխանակեցին զպէտս բնականս, ՚ի պէտս անբնականս։ * Նոյնպէս և արուք թողեալ զբնական պէտս իգութեան, բորբոքեցան ցանկութեամբք իւրեանց ՚ի միմեանս. արուք ընդ արուս զխայտառակութիւն գործէին. և զհարձ փոխարինին՝ որ պարտ էր մոլորութեան ն՟ց յանձինս իւրեանց ընդունէին։ * Եւ ո՟պ՝ զի ոչ ընտրեցին զԱ՟Ծ ունել ՚ի գիտութեան. մատնեաց զնոսա Ա՟Ծ ՚ի միտս անարգութեան՝ գործել զանարժանս։ * Լցեալս ամ՟ անիրաւութեամբ. պոռնկութեամբ. անզգամութեամբ. ագահութեամբ. չարութեամբ. լի նախանձու. սպանութեամբ. հեռիւ. նենգութեամբ. չարաբարոյութեամբ. շոգմոգք։ * Զրախօսք. Ա՟Ծատեացք. ամբարտաւանք. ամբարհաւաճք. գտիչք չարեաց. ծնողաց անարգուք։ * Անմիտք. ուխտադրուժք. անագորոյնք. աննուէրք. անողորմք։ * Որք հասեալք էին ա՟յ իրաւանցն վերայ. թէ որք զայսպիսիս գործեն՝ արժանի են մահու. և ոչ միայն որք զայնս առնեն, այլ և որք կամակիցն լինին գործելեացն։

## ԳԼ. Բ.

Վ՟ս որոյ անպատասխանի տալոյ ես ո՟վ մարդ՝ որ դատեսդ։ ‖ զի որով դատես զընկերն, զանձն քո դատապարտես. զի դու զնոյն գործես՝ որով դատեսն։ * Քանզի գիտեմք եթէ Ա՟յ դատաստանն ճշմարտութեամբ է ՚ի վերայ այնոցիկ՝ որք զայնպիսիսն գործեն։ * Իսկ արդ խորհիցիս զայս ո՟վ մարդ, որ դատես զայնոսիկ՝ որք զայնպիսիսն գործեն՝ և դու զնոյն գործես, եթէ ապրելոց իցես ՚ի դատաստանաց անտի ա՟յ։ * Եթէ զմեծութեամբ քաղցրութեան ն՟ր, և զներելով և զերկայնմտութեամբն արհամարհիցես. չգիտիցես, զի քաղցրութիւն ա՟յ զքեզ յապաշխարութիւն ածէ։ * Այլ ըստ խստութեան քում, և ըստ անզեղջ սրտի գանձես անձին քում զբարկութիւն յաւուր բարկութեան, և յայտնութեան արդար դատաստանութեան ա՟յ։ * ‖ Որ հատուցանէ իւրաքանչիւրոց ըստ գործոց իւրեանց։ * † Որք համբերութեամբ են ՚ի գործս բարութեան, զփառս՝ և զպատիւ՝ և զանեղծութիւն խնդրեն, զկեանս յաւիտենից։ * Իսկ † որք ՚ի հակառակութենէ անտի են, և ապստամբք ՚ի ճշմարտութենէն՝ և զհետ երթան անիրաւութեան, բարկութիւն, և սրտմտութիւն։ * Նեղութիւն և անձկութիւն ՚ի վ՟ր ամ՟ մարդոյ՝ որ գործէ զչար. նախ Հրէի՝ և ապա հեթանոսի։ * Փառք և պատիւ և խաղաղութիւն ամ՟ի, որ գործէ զբարի. նախ Հրէի՝ և ապա հեթանոսի։ * ‖ Զի ոչ է ակնառութիւն առաջի ա՟յ։ * Որք միանգամ արտաքոյ օրինացն մեղան, արտաքոյ օրինացն և կորնչին. և որք ընդ օրինօքն մեղան, օրինօքն և դատեսցին։ * ‖ Զի ոչ եթէ որք լսօղք օրինացն են՝ արդարացեալք են առաջի ա՟յ. այլ առնօղք օրինացն արդարասցին։ * Այլ յորժամ հեթանոսք որք զօրէնս ոչ ունին, բնութեամբ զօրինացն գործեն, նոքա՝ որք զօրէնս ոչ ունին, անձանց իւրեանց իսկ են օրէնք։

*Որք

15 * Որք ցուցանեն զգործս օրինացն գրեալ 'ի սիրտս իւրեանց՝ վկայութիւն մտաց իւրեանց․ և յանդիմանել զմիմեանս 'ի խորհրդոց իւրեանց․ կամ թէ պատասխանի իսկ տալ։ 16 * Յաւուրն յորում դատիցի Ած զգաղտնիս մարդկան՝ ըստ աւետարանի իմոյ, 'ի ձեռն Յի Քի։ 17 * Ապա եթէ դու Հրեայ անուանեալ ես՝ և յենցեալ ես յօրէնսն՝ և պարծիս յԱծ։ 18 * Եւ գիտես զկամս նորա՝ և ընտրես զլաւն՝ և խրատեալ ես յօրինացն։ 19 * Աչպես ես յանձն քո՝ առաջնորդ լինել կուրաց, լոյս խաւարելոց։ 20 * Խրատիչ անզգամաց՝ վարդապետ տղայոց․ ունել զկերպարանս գիտութեան և ճշմարտութեան օրինացն։ 21 * Իսկ արդ որ ուսուցանես զընկերն, զանձն քո ոչ ուսուցանես․ որ քարոզես չգողանալ՝ գողանաս։ 22 * Որ ասես չշնալ՝ շնաս․ որ գարշիս 'ի կռոց՝ զսեղանս կողոպտես։ 23 * Որ օրինօքն պարծիս՝ յանցանել զօրէնսն զԱծ անարգես։ 24 * (Զի անուն Այ վն ձեր հայհոյի 'ի մէջ հեթանոսաց՝ որպէս և գրեալ է։) 25 * Թլփատութիւն օգնէ՝ եթէ զօրէնսն պահիցես․ ապա եթէ յանցաւոր օրինացն իցես, թլփատութիւն քո անթլփատութիւն եղև։ 26 * Իսկ եթէ անթլփատութիւնն զիրաւունս օրինացն պահիցէ, ո՞չ ապաքէն անթլփատութիւն նր 'ի թլփատութիւն համարեսցի։ 27 * Եւ դատիցէ՝ որ 'ի բնէ անթլփատութիւն է զօրէնսն կատարելով զքեզ, որ գրովն և թլփատութեամբն յանցաւոր օրինացն իցես։ 28 * Զի ո՛չ եթէ որ յայտնի հրեայն է․ և ո՛չ որ յայտնի մարմնով թլփատութիւն։ 29 * Այլ որ 'ի ծածուկ հրեայն է․ և թլփատութիւն սրտի հոգւով, և ո՛չ գրով․ որոյ գովութիւնն ո՛չ 'ի մարդկանէ է, այլ յԱյ։

Գործ․ 10․34․ Գաղա․ 2․ 6․ Ղևտա․ 3․ 25․ ‖ Մատ․ 7․21․ Յակ․ 1․22․ ‖ Եսայ․ 52․5․ Եզեկ․ 36․20․ Ե․Օ․

## ԳԼ․ Գ․

1 Իսկ արդ զի՞նչ աւելի է հրէին, կամ զի՞նչ օգուտ 'ի թլփատութենէ անտի։ 2 * Բազում ինչ ամ իրօքն․ նախ այն իսկ՝ զի հաւատարիմք եղեն պատգամքն Այ։ 3 * Իսկ արդ եթէ չէր հաւատացեալ ոմանց՝ միթէ անհաւատութիւնն նոցա զԱյ հաւատսն խափանեսցէ՝ քաւ լիցի։ 4 * Այլ եղիցի ամ ճշմարիտ՝ և ամ մարդ սուտ։ որպէս և գրեալ է․ որպէս արդար եղիցիս 'ի բանս քո․ և յաղթեսցես 'ի դատել քեզ։ 5 * Իսկ արդ եթէ ապիրատութիւնն մեր զԱյ արդարութիւնն յանդիմանն կացուցանէ՝ զի՞նչ ասեմք․ միթէ անիրաւ ինչ է Ած, որ ածէ զբարկութիւն։

‖ 2․Տիմ․ 2․13․ ‖ Յովհ․ 3․ 33․ ‖ Սաղմ․ 115․11․ ‖ Սաղմ․ 50․6․



6 * (Ըստ մարդկութեան ասեմ։) քաւ լիցի․ ապա թէ ոչ զիա՞րդ դատէ Ած զաշխարհս։ 7 * Զի եթէ ճշմարտութիւնն Այ յիմում ստութեանն առաւելաւ 'ի փառս նորա՝ զի՞ և ես ևս իբրև զմեղաւոր դատիմ։ 8 * Եւ՞ կամ (որպէս հայհոյիմք, և որպէս ասեն զմէնջ ոմանք ասել) թէ արասցուք զչարն՝ զի եկեսցէ բարին․ որոց դատապարտութիւնն յիրաւի են։ 9 * Եւ՞ արդ իւ՞ իցէք առաւել իցեմք․ ապաքէն և ոչ իւ՞իք․ ‖ քանզի յառաջագոյն իսկ մեղադրեցաք եղեաք հրէից և հեթանոսաց՝ ամենեցուն ը 10 մեղօք լինել։ * Որպէս և գրեալ է․ ‖ թէ ոչ՞ք է արդար՝ և ոչ մի։ 11 * Եւ ոչ գոյ՝ որ իմանայ․ և ոչ՞ք է որ 12 խնդրէ զԱծ։ * Ամենեքեան խոտորեցան, 'ի միասին անպիտանացան․ ոչ՞ք է որ առնէ զբարի․ և ոչ՞ք է մինչև 13 ցմի։ * ‖ Գերեզման բաց է կոկորդ նոցա՝ լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն․ ‖ թոյնք իժից 'ի ներքոյ շրթանց 14 նոցա։ * ‖ Որոց բերանք անիծիւք և 15 դառնութեամբ լի են։ * ‖ Երագ ոտք են նոցա հեղուլ զարիւն։ 16 * Բեկումն և թշուառութիւն 'ի ճանապարհս 17 նց։ * Եւ զճանապարհն խաղաղութեան 18 ոչ ծանեան։ * ‖ Ոչ է երկիւղ Այ առաջի աչաց նոցա։ 19 * ‖ Բայց գիտեմք՝ զորինչ միանգամ օրէնքն ասեն․ այնոցիկ՝ որք ընդ օրինօքն են, ասեն․ զի ամ բերան խցցի․ և դատապարտ լիցի ամ աշխարհ Այ։ 20 * Զի 'ի գործոց օրինաց ոչ արդարասցի ամ մարմին առաջի նր․ քանզի օրինօքն է գիտութիւն մեղաց։ 21 * Բայց արդ՝ առանց օրինացն իսկ արդարութիւնն Այ յայտնեալ է՝ վկայեալ յօրինաց անտի՝ և 'ի մարգարէից։ 22 * Քանզի արդարութիւնն Այ 'ի հաւատոց անտի Յի Քի յամ հաւատացեալս․ և ոչ ինչ է 23 խտիր։ * Քանզի ամենեքեան մեղան․ և նուազեալ են 'ի փառացն Այ։ 24 * Եւ արդարանան ձրի նորին շնորհօք՝ 'ի ձեռն փրկութեան որ 'ի Քս Յս։ 25 * Զոր յառաջն եդ Ած 'ի քաւութիւն 'ի ձեռն հաւատոցն արեամբ նորա, 'ի հանդէս արդարութեան նր, վն թողութեան յառաջագոյն մեղացն գործելոց։ 26 * Ներելն Այ, 'ի հանդէս արդարութեան նորա 'ի ժամանակի յայսմիկ․ զի եղիցի նա արդար․ և արդարացուցէ զայն որ 'ի հաւատոյն Յի։ 27 * Իսկ արդ ուր են պարծանքն․ արգելան․ յորոց օրինաց․ 'ի գործո՞ց անտի, ո՛չ, այլ 'ի հաւատոյն օրինաց։ 28 * Քանզի համարիմք հաւատովք արդարանալ մարդոյ՝ առանց գործոց օրինաց։ 29 * Եթէ

և ոչ (որպէս　դատա_ պարտու　իւք　‖ Գաղա․ 3․ 22․　‖ Սաղմ․ 13․3․　‖ Սաղմ․ 5․ 11․　‖ Սաղմ․ 139․ 4․　‖ Սաղմ․ 13․ 3․　‖ Եսայ․ 59․7․　Առակ․ 1․ 16․　Բ․Գ․　‖ Սաղմ․ 35․ 2․　‖ Գաղա․ 2․ 16․

հրէի՞ց միայն իցէ Ա՟Ծ՝ և հեթանոսաց ո՞չ. այո՛ և հեթանոսաց։ *Զի եթէ 30 մի է Ա՟Ծ՝ որ արդարացուցանէ զթլփատութիւն 'ի հաւատոց. ապա և զանթլփատութիւն նովին հաւատովք։ *Արդ՝ զօրէնսն ինչ խափանեմք հաւատովքս. քա՛ւ լիցի. այլ զօրէնսն հաստատեմք։ 31

## ԳԼ: Դ.

Բ.Օ.

Իսկ արդ՝ զի՞նչ ասիցեմք գտանելն աբրահամու նահապետին մերոյ ըստ մարմնոյ։ 1 *Զի եթէ աբրահամու գործովք էր արդարացեալ. ունիլ ունէր պարծանս՝ այլ ո՛չ առ Ա՟Ծ։ 2 *Իսկ զի՞նչ ասիցէ գիրն. Հաւատաց աբրահամ յԱ՟Ծ՝ և համարեցաւ նմա յարդարութիւն։ 3 *Բայց այնմ՝ որ գործիցէն՝ ո՛չ համարին վարձքն ըստ շնորհաց՝ այլ ըստ պարտեաց։ 4 *Իսկ այնմ, որ ոչն գործիցէ՝ բայց հաւատայցէ յայն՝ որ արդարացուցանէ զամբարիշտս, համարին հաւատքն նր՟ յարդարութիւն ըստ առաջադրութեան շնորհին Ա՟Յ։ 5 *Որպէս և դաւիթ ասէ զերանութիւն մարդոյ՝ որում Ա՟Ծ համարի զարդարութիւն առանց գործոց։ 6 *Երանի՝ որոց թողան անօրէնութիւնք. և որոց ծածկեցան մեղք։ 7 *Երանեալ է այր՝ որում ոչ համարեսցի Տ՟Ր զմեղս։ 8 *Արդ՝ երանութիւնս այս. 'ի վ՟ր թլփատութեան է՝ եթէ 'ի վերայ անթլփատութեան. քանզի ասեմք՝ եթէ համարեցան աբրահամու հաւատքն յարդարութիւն։ 9 *Արդ՝ զիա՞րդ համարեցան. մինչդեռ 'ի թլփատութեանն էր՝ թէ յանթլփատութեան. ո՛չ 'ի թլփատութեանն, այլ յանթլփատութեան։ 10 *Եւ նշանակ էառ զթլփատութիւն, կնիք արդարութեան հաւատոցն՝ որ յանթլփատութեան անդ էր. 11 *Զի եղիցի նա հայր ամ՟ հաւատացելոց, որք յանթլփատութեան անդ իցեն. առ 'ի համարելոյ և նց՟ արդարութիւն, և հայր թլփատութեան, 12 որոց ո՛չ 'ի թլփատութենէ անտի և եթ. այլ և որոց երթայցեն ընդ հետս անթլփատութեան հաւատոց հօր մերոյ աբրահամու։

Գ.Գ.

*Զի ո՛չ եթէ օրինօքն են աւետիքն աբրահամու՝ և զաւակի նր՟ ժառանգ լինիլ աշխարհի. այլ 'ի հաւատոյն արդարութենէ։ 13 *Զի եթէ որք յօրինացն են, ժառանգք իցեն. ապա ընդունայն են հաւատքն՝ և դատարկ աւետիքն։ 14 *Քանզի օրէնքն զբարկութիւն գործեն. բայց ուր ոչ են օրէնք՝ և ո՛չ յանցանք ինչ։ 15 *Վ՟ն այնորիկ 'ի հաւատոց անտի, զի ըստ շնորհացն իցէ. առ 'ի 16 լինելոյ հաստատուն աւետեացն ամ՟ զաւակին. ո՛չ այնմ միայն՝ որ յօրինաց անտի. այլ և այնմ, որ 'ի հաւատոցն աբրահամու. որ է հայր մեր ամենեցուն։ 17 (*Որպ՟ և գրեալ է. Թէ հայր ազգաց բազմաց արարի զքեզ։) առաջի Ա՟Յ, որում հաւատաց՝ եթէ կենդանի առնէ զմեռեալս. և կոչէ ըզ չգոյն իբրև զգոյ։ 18 *Որ անյոյսն յուսով հաւատաց լինիլ նմա հայր ազգաց բազմաց. ո՛րպ՟ և ասացաւն. Թէ այնպէս եղիցի զաւակ քո։ 19 *Եւ նա ո՛չ երկմտեաց 'ի հաւատոցն. թէպէտ և հայեցաւ 'ի մարմին իւր այնուհետև իբրև 'ի մեռեալ. քանզի զհարիւրամենիւք ուրեմն էր. և 'ի մեռելութիւն յարգանդին սառայի։ 20 *Այլ յաւետեացն Ա՟Յ ո՛չ երկմտեաց անհաւատութեամբ. այլ զօրացաւ հաւատովք. ետ փառս Ա՟Յ։ 21 *Եւ հաստատեցաւ 'ի միտս իւր, թէ որ խոստացաւն՝ կարօղ է առնել. 22 *Վ՟ն որոյ և համարեցաւ նմա յարդարութիւն։ 23 *Այլ ո՛չ զի գրեցաւն, ո՛չ եթէ վասն նր՟ միայն, եթէ համարեցաւ նմա. 24 *Այլ և վասն մեր՝ որոց համարելոց է. որք հաւատամք յայն՝ որ յարոյց զՅ՟Ս զՏ՟Ր մեր 'ի մեռելոց։ 25 *Որ մատնեցաւ վ՟ն յանցանաց մերոց. և յարեաւ վասն զմեզ արդարացուցանելոյ։

## ԳԼ: Ե.

1 Արդ յաւուհետև արդարացեալք 'ի հաւատոց անտի, զխաղաղութիւն կալցուք առ Ա՟Ծ 'ի ձեռն Տ՟Ն մերոյ Յ՟Ի Ք՟Ի։ 2 *Որով և զընծայութիւն ընկալաք հաւատովք 'ի շնորհս յայսոսիկ յորում կամք, և պարծիմք յուսով փառացն Ա՟Յ։ 3 *Եւ ո՛չ այսչափ միայն, այլև պարծիմք ևս 'ի նեղութիւնս մեր. քանզի գիտեմք, եթէ նեղութիւնք 4 զհամբերութիւն գործեն. *Համբերութիւն զհանդէս. հանդէս զյոյս։ 5 *Յոյս՝ ո՛չ երբէք ամաչեցուցանէ. զի սէրն Ա՟Յ սփռեալ է 'ի սիրտս մեր, 'ի ձեռն հոգւոյն սրբոյ՝ որ տուաւ մեզ։ 6 *Զի մինչդեռ տկարքն էաք՝ Ք՟Ս վ՟ն մեր 'ի ժամանակի 'ի վ՟ր ամբարշտաց 7 մեռաւ։ *Զի վասն արդարոյ հազի՛ւ ոք մեռանիցի. այլ վ՟ն բարւոյ թերևս 8 համարձակիցի ոք մեռանիլ։ *Յայտնեաց Ա՟Ծ զսէրն իւր 'ի մեզ. զի մինչ 9 դեռ տկարքն էաք, *Ք՟Ս վասն մեր մեռաւ. ո՛րչափ ևս առաւել յարդարանալս մերում այժմիկ արեամբն նորա ապրեցուք նովաւ 'ի բարկութենէ անտի։ 10 *Զի եթէ մինչ թշնամիքն էաք՝ հաշտեցաք ընդ Ա՟Յ մահուամբ Որդւոյ նր՟.

Ծննդ. 15. 6. Գաղատ. 3. 6. Յակ. 2. 23. Սաղմ. 31. 1. Ծննդ. 17. 10. 11. Ծննդ. 17. 4. Ծննդ. 15. 5. Եփես. 2. 18. Յակ. 1. 3. Եբր. 9. 14. 1. Պետ. 3. 18.

նի. որչափ ևս առաւել 'ի հաշտիլս մե-
րում ապրեսցուք կենօք նորա։ *Եւ ոչ 11
այսչափ միայն. այլև պարծիմք ևս
յԱծ 'ի ձեռն Տն մերոյ Յի Քի. ո-
րով և զհաշտութիւն իսկ ընկալաք։

Գ. Զ.

*Զի որպէս 'ի միջէ մարդոյ մեղք յաշ- 12
խարհ մտին՝ և 'ի մեղաց անտի մահ.
և այնպէս յամ մարդիկ տարածեցաւ
մահ՝ որով ամենեքեան մեղան։
*Քանզի մինչև յօրէնսն մեղք էին 13
յաշխարհի. բայց մեղք ոչ համարին,
ուր օրէնք ոչ իցեն։ *Այլ թագաւո- 14
րեաց մահ յԱդամայ մինչև ցՄովսէս։
և 'ի վերայ չյանցուցելոցն, ըստ նմա-
նութեան յանցուածոցն Ադամայ. որ է
օրինակ հանդերձելոցն։ *Այլ ոչ 15
որպէս յանցանքն, նոյնպէս և շնորհքն։
զի եթէ միոյն յանցանօք բազումք մե-
ռան. որչափ ևս առաւել շնորհքն այ
և պարգևք՝ շնորհօք միոյն մարդոյ Յի
Քի 'ի բազումս առաւելաւ։ *Եւ ոչ 16
որպէս 'ի միոջէ յանցուցելոյն պարգևս։
քանզի դատաստանն 'ի միոջէ յանցու-
ածոյ անտի 'ի դատապարտութիւն։
այլ շնորհքն 'ի բազմաց յանցուածոցն
յարդարութիւն։ *Զի եթէ միոյն յան- 17
ցանօք մահ թագաւորեաց միովն, որ-
չափ ևս առաւել՝ որք զառաւելութիւն
շնորհաց և զպարգևաց արդարութեան
առնուցուն, կենօք թագաւորեսցեն
'ի ձեռն միոյն Յի Քի։ *Ապաքէն 18
որպէս միոյն յանցանօք յամ մարդիկ դա-
տապարտութիւն, նոյնպէս և միոյն ար-
դարութեամբ՝ յամ մարդիկ արդարութիւն
կենաց։ *Զի որպէս անհնազանդութեամբ 19
միոյն մարդոյ մեղաւորք բազումք ե-
ղեն. նոյնպէս և հնազանդութեամբ միոյն,
արդարք բազումք եղիցին։ *Բայց 20
օրէնք 'ի ներքս անկան, զի յանցանքն
բազմասցին։ զի ուր առաւել եղեն
մեղքն, առաւել ևս յաւելան շնորհքն։
*Զի որպէս թագաւորեցին մեղքն 21
'ի մահու անդ. նոյնպէս և շնորհքն
թագաւորեսցեն արդարութեամբ 'ի
կեանսն յաւիտենից 'ի ձեռն Յի Քի
Տն մերոյ։

ոչ համարէր՝ մինչ օրէնն ոչ էին

## Գլ. Զ.

Իսկ արդ՝ զի՞նչ ասիցեմք՝ յաճախես- 1
ցուք 'ի մեղս՝ զի շնորհքն բազմաս-
ցին։ *Քաւ լիցի։ որք մեռաք մե- 2
ղացն. զիա՞րդ տակաւին 'ի նմին կեց-
ցեմք։ *Եթէ ոչ գիտէք՝ զի որք մի ան- 3
գամ մկրտեցաք 'ի Քս Յս՝ 'ի մահ
անդր նորա մկրտեցաք։ *Թաղեցաք 4
ընդ նմին մկրտութեամբն 'ի մահ. զի որպէս
յարեաւ Քս 'ի մեռելոց փառօք հօր.
նոյնպէս և մեք 'ի նորոգութեան կենաց շր-

Գաղա. 3. 27. Կող. 2. 12.

5 ջիցուք։ *Զի եթէ տնկակիցք եղեաք
նմանութեան մահու նորա. այլև յարութեան
6 նորա լինիցիմք։ *Զայս գիտասջիք՝ զի
հին մարդն մեր խաչակից եղև նորա՝ զի
խափանեսցի մարմին մեղացն, մի ևս
7 ծառայել մեզ մեղացն։ *Զի որ մե-
ռանի՝ արդարացեալ է 'ի մեղաց.
8 *Իսկ եթէ մեռաք ընդ Քի, հաւա-
տամք, թէ և կեցցուք ընդ նմա։
9 *Գիտեմք զի Քս յարուցեալ է 'ի մե-
ռելոց։ այսուհետև ոչ մեռանի։ և
10 մահ նմա ոչ ևս տիրէ։ *Զի որ մե-
ռաւն՝ մեղացն մեռաւ միանգամ. և
որ կենդանին է՝ կենդանի է այ։
11 *Նոյնպէս և դուք համարեսջիք զան-
ձինս մեռեալս մեղացն, և կենդանիս
այ, 'ի Քս Յս 'ի Տր մեր։
12 *Մի այսուհետև թագաւորեսցեն
մեղք 'ի մահկանացու մարմինս ձեր՝
հնազանդիլ ցանկութեանց նորա։
13 *Եւ մի պատրաստէք զանդամս ձեր
զէն անիրաւութեան մեղացն։ այլ պատ-
րաստեցէք զանձինս ձեր այ։ որպէս
'ի մեռելոց 'ի կենդանիս։ և զանդամս
ձեր զէն արդարութեան այ։
14 *Զի մեղք ձեզ ոչ տիրեսցեն. քանզի
ոչ էք ընդ օրինօք՝ այլ ընդ շնորհօք։
15 *Իսկ արդ՝ զի՞ արդ. մեղիցուք, զի չեմք
ընդ օրինօք՝ այլ ընդ շնորհօք։
16 *Քաւ լիցի։ ոչ գիտէք եթէ որում
պատրաստէք զանձինս ձեր ծառայս
'ի հնազանդութիւն, ծառայք էք՝
որում հնազանդիքն, եթէ մեղաց՝ 'ի
մահ. և եթէ 'ի հնազանդութիւն ար-
17 դարութեան, 'ի կեանս։ *Այլ շնորհք
այ, զի էիք ծառայք մեղաց՝ հնա-
զանդեցայք 'ի սրտէ՝ որում աւանդե-
ցայք յառակ վարդապետութեան։
18 *Արդ՝ ազատացեալք 'ի մեղաց՝ ծա-
19 ռայեցէք արդարութեան։ *Մարդկօ-
րէն ասեմ վասն տկարութեան մարմնոյ
ձերոյ։ զի որպէս պատրաստեցիք զան-
ձինս ձեր ծառայս պղծութեան, և անօ-
րէնութեան յանօրէնութիւն. նոյնպէս և
այժմ պատրաստեցէք զանդամս ձեր
ծառայս արդարութեան, 'ի սրբութիւն։
20 *Զի մինչ ծառայքն էիք մեղաց՝
ազատացեալք էիք յարդարութենէ։
21 *Իսկ արդ՝ զի՞նչ պտուղ ունէիք յայն
ժամ. որովք այժմդ զամօթի հարեալ
էք։ զի վախճան նոցա մահ է։
22 *Բայց արդ ազատացեալք 'ի մեղացն՝
և ծառայեալք այ՝ ունիք զպտուղ ձեր
'ի սրբութիւն, և վախճան նորա կեանք
23 յաւիտենից։ *Զի թոշակն մեղաց
մահ է. այլ շնորհքն Այ կեանք յաւ-
իտենից 'ի Քս Յս 'ի Տր մեր։

Եփես. 4. 23. Եբրայ. 12. 1. 1. Պետ. 2. 1. և 4. 2.

Գ. Կ.

Յովհ. 8. 33. 2. Պետ. 2. 19.

ծառայք եղէք զանդամս ձեր

## Գլ: Է:

Գ. Գ

1 Եթէ ոչ գիտէք եղբարք (զի ընդ գիտունս օրինաց խօսիմ) զի օրէնք տիրեն մարդոյ որչափ ժամանակս կենդանի իցէ: 2 *Քանզի կին առնակին, 'ի կենդանի այր իւր կապեալ կայ օրինօք. իսկ եթէ մեռցի այրն, արձակեալ է յօրինաց առն: 3 *Ապա ուրեմն մինչ կենդանի է այրն, շուն կոչի՝ եթէ լինիցի առն այլում. և եթէ մեռանիցի այրն, ազատ է յօրինացն: չհամարեալ շուն, եթէ լինիցի առն այլում: 4 *Այսուհետև և դուք եղբարք մեռայք օրինացն մարմնովն Քի, լինել այլում, որ 'ի մեռելոցն յարուցեալ է, զի պտղաբերք լիցուք այ: 5 *Քանզի մինչ էաքն մարմնով, կարիք մեղաց՝ որք օրինօքն էին՝ զօրանային յանդամս մեր, առ 'ի պտղաբերս առնելոյ զմեզ մահու: 6 *Բայց այժմ դատարկացաք յօրինաց անտի. քանզի մեռաք այնմիկ՝ որով ըմբռնեալն էաք, առ 'ի ծառայել մեզ նորոգութբ հոգւոյն՝ և ոչ հնութբ գրոյն: 7 *Իսկ արդ զի՞նչ ասեմք. օրէնքն մեղք իցեն. քաւ լիցի. այլ զմեղս ոչ գիտէի, եթէ ոչ օրինօք. և զցանկութի ոչ ճանաչէի, եթէ ոչ օրինացն էր ասացեալ՝ Մի՛ ցանկանայցես: 8 *Պատճառս առին մեղքն պատուիրանաւն, և գործեցին յիս զամենայն ցանկութի: զի առանց օրինացն մեղքն մեռեալ էին: 9 *Եւ ես առանց օրինացն երբեմն էի կենդանի: այլ իբրև եհաս յիս պատուիրանն, մեղքն կենդանացան: 10 *Եւ ես մեռայ: և գտաւ ինձ պատուիրանն՝ որ 'ի կեանսն էր, նոյն 'ի մահ: 11 *Զի մեղացն պատճառս առեալ պատուիրանաւն՝ խաբեցին զիս, և նովին սպանին:

Գ. Օ

12 *Այսուհետև օրէնքն սբք են՝ և պատուիրանն սբ՝ և արդար՝ և բարերար: 13 *Իսկ արդ՝ ինձ բարին մահ եղև. քաւ լիցի. այլ մեղքն: զի երևեսցին մեղքն բարեաւն գործել ինձ զմահ. զի եղիցին ըստ առաւելութեան մեղքն մեղաւոր 'ի ձեռն պատուիրանին: 14 *Գիտեմք զի օրէնքն հոգևոր են: այլ ես մարմնաւոր եմ, ընդ մեղօք վաճառեալ: 15 *Զի զոր գործեմն՝ ոչ գիտեմ. ոչ եթէ զոր կամիմն զբարին՝ զայն առնեմ. այլ զոր ատեամն զչարն՝ զայն գործեմ: 16 *Ապա թէ զոր ոչն կամիմ՝ զայն առնեմ. վկայեմ օրինացն՝ եթէ բարւոք են: 17 *Այլ արդ ոչ եթէ ես գործեմ զայն, այլ բնակեալ յիս մեղքն: 18 *Գիտեմ, զի ոչ բնակեալ է յիս, այսինքն 'ի մարմնի իմում, բարի ինչ. զի կամքն առաջի կան ինձ. և առնել զբարին ոչ †: 19 *Զի ոչ եթէ զոր կամիմ զբարին՝ զայն առնեմ, այլ զոր ոչն կամիմ զչարն, զայն գործեմ: 20 *Ապա եթէ, զոր ոչն կամիմ, զայն առնեմ. ոչ ևս ես առնեմ զայն՝ այլ բնակեալ յիս մեղքն: 21 *Գտանեմ արդ՝ զօրէնս այնորիկ՝ որք կամիցին առնել յիս զբարին. և ինձ չարն առաջի կայ: 22 *Հաճեալ եմ ընդ օրէնսն Այ ըստ ներքին մարդոյն: 23 *Բայց տեսանեմ այլ օրէնս յանդամս իմ, զինեալ հակառակ օրինաց մտաց իմոց. և գերեալ զիս օրինօքն մեղաց՝ որք են յանդամս իմ: 24 *Այր մի տառապեալ եմ ես: ո՞վ ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ աստի մահու: 25 *Այլ շնորհքն այ 'ի ձեռն Յի Քի Տն մերոյ: ապա ուրեմն ես ինքնին միտօք ծառայեմ օրինացն այ: և մարմնով օրինացն մեղաց:

Ա. Կոր. 7.39. — Ել. 20.17. Բ. Օրէ. 5.21. — Ա. Տիմ. 1.8. — †կամիմ

## Գլ: Ը:

Եա

1 Թէ այդպէս իցէ՝ ոչինչ դատապարտութի է այնոցիկ՝ որք 'ի Քս Յս. որք ոչ ըստ մարմնոյ վարին: 2 *Զի օրէնք հոգւոյն կենաց 'ի Քս Յս ազատեցին զիս յօրինաց մեղացն և մահու: 3 *Զի որ անհնարին էր օրինացն՝ որով տկարանայրն մարմնով. Ած զՈրդին իւր առաքեաց 'ի նմանութի մարմնոյ մեղաց՝ և վս մեղաց. և դատապարտեաց զմեղս 'ի մարմնի անդ: 4 *Զի արդարութի օրինացն կատարեսցի 'ի մեզ, որք ոչ ըստ մարմնոյ գնայցեմք՝ այլ ըստ հոգւոյ: 5 *Զի որք ըստ մարմնոյն են՝ զմարմնոյն խորհին. և որք ըստ հոգւոյն՝ զհոգւոյն: 6 *Զի խորհուրդ մարմնոյ՝ մահ է. և խորհուրդ հոգւոյն, կեանք և խաղաղութի: 7 *Քանզի խորհուրդ մարմնոյ թշնամութի է յԱծ՝ զի օրինացն այ ոչ հնազանդի. նաև կարէ իսկ ոչ: 8 *Զի որք մարմնովն են, այ հաճոյ լինել ոչ կարեն: 9 *Բայց դուք ոչ էք մարմնով՝ այլ հոգւով, եթէ իցէ Հոգին այ 'ի ձեզ բնակեալ: ապա եթէ ոք զՀոգի Քի ոչ ունի, սա չէ նորա: 10 *Իսկ եթէ Քս 'ի ձեզ է՝ ապա մարմին մեռեալ է վասն մեղաց. և հոգին կենդանի վասն արդարութե: 11 *Եթէ Հոգի այնորիկ՝ որ յարոյց զՅս 'ի մեռելոց, բնակեալ է 'ի ձեզ. ապա և որ յարոյց զՅս Քս 'ի մեռելոց՝ կենդանացուսցէ և զմահկանացու մարմինս ձեր բնակեալ Հոգւովն իւրով 'ի ձեզ: 12 *Այսուհետև եղբարք պարտապան եմք՝ ոչ մարմնով ըստ մարմնոյ կեալ: 13 *Զի եթէ ըստ մարմնոյ

նոյ

նոյ կեցջիք՝ մեռանելոց էք. իսկ եթէ հոգւով զգործս մարմնոյ սպանանի-ցէք՝ կեցջիք։ 14 * Զի որք հոգւովն այ վարին, նոքա են որդիք այ։ 15 * ‖ Զի ոչ առիք զհոգին ծառայութեան միւսան-գամ յերկիւղ. այլ առիք զհոգին ‖ որ-դեգրութեան. որով աղաղակեմք Աբբայ (Հայր։) 16 * Նոյն ինքն Հոգին վկայէ հոգւոյս մերում, եթէ եմք որդիք այ։ 17 * Իսկ եթէ որդիք, ապա և ժառանգք. ժառանգք այ՝ և ժառանգակիցք Քի. եթէ չարչարանացն կցորդք լինիցիմք, և փառացն հաղորդք լինելոց եմք։ 18 * Համ այսպէս թուի՝ եթէ ոչ են ար-ժանի չարչարանք ժամանակիս հան-դերձելոց փառացն՝ որք յայտնելոց են 'ի մեզ։ 19 * Զի ակնկալութի արարա-ծոց յայտնութեան Որդւոյն այ սպասէ։ 20 * Զի ընդունայնութեան արարածք հնա-զանդեցան, ոչ իւրեանց կամաւ՝ այլ վասն այնորիկ՝ որ հնազանդեցոյցն յու-սով։ 21 * Զի և ինքեանք իսկ արարածքն ազատեսցին 'ի ծառայութենէ ապա-կանութեան յազատութի փառաց Որդ-ւոյն Այ։ 22 * Քանզի գիտեմք, եթէ ամ արարածք հեծեն՝ և երկնեն մին-չև ցայժմ։ 23 * Եւ ոչ այսչափ միայն. այլ և մեք իսկ՝ որք զպտուղ Հոգւոյն ունիմք, անձամբ յանձինս մեր հե-ծեմք՝ որդեգրութեան ակնկալեալ՝ փրկ կութեան մարմնոյ մերոյ։ 24 * Զի յուսով ապրեցաք. այլ յոյս տեսանելի՝ չէ յոյս. զի զոր տեսանէ ոք՝ զի՞ ևս յուսայ։ 25 * Ապա եթէ զոր ոչն տեսանեմք, յու-սամք. համբերութբ ակն ունիմք։ 26 * Նոյնպէս և Հոգին 'ի թիկունս հա սանէ տկարութեան մերում. զի զոր կամքն յաղօթս՝ ոպ արժանն իցէ՝ ոչ գիտեմք. այլ ինքն Հոգին բարեխօս լինի 'ի հեծութիս անմռունչս։ 27 * Այլ որ քննէն զսիրտս՝ գիտէ զինչ խորհուրդ է Հոգւոյն. զի ըստ այ բա րեխօսէ վասն սրբոց։ 28 * Այլ գիտեմք՝ եթէ որոց սիրեն զԱծ՝ յամենայնի գործակից լինի 'ի բարիս. որք հրաւի րանաւն կոչեցան։ 29 * Զի զորս յառաջն ծանաչէր՝ յառաջագոյն և հրաւիրեաց կերպարանակից լինել պատկերի Որդ-ւոյն իւրոյ. զի եղիցի նա անդրանիկ 'ի մէջ եղբարց բազմաց։ 30 * Եւ զորս յառաջագոյն հրաւիրեաց՝ զնոսին և կոչեաց. և զորս կոչեացն, զնոսին և արդարացոյց. և զորս արդարացոյցն, զնոսին և փառաւորս արար։ 31 * Իսկ արդ զի՞նչ ասեմք առ այս. եթէ Ած 'ի մեր կոյս է, ո՞վ իցէ մեր հակառակ։ 32 * Որ յիւր Որդին ոչ խնայեաց՝ այլ վն մեր ամենեցուն մատնեաց զնա. զի-

‖ 2. Տիմ. 1. 7.
‖ Գաղ. 4. 5.
Որդւոյն Ա.Յ.
Որդւոյն Ա.Յ.
և ոչ նք միայն,

ա՞րդ ոչ նովաւ հանդերձ զամ շնորհես-33 ցէ մեզ։ * Ո՞վ իցէ՝ որ մեղադիր լինի-ցի ընտրելոց այ. Ած է՝ որ արդարա-34 ցուցանէ։ * Իսկ արդ՝ ո՞վ է՝ որ դատա-պարտ առնիցէ։ Քս Յս՝ որ մեռաւն՝ մանաւանդ թէ յարուցեալ իսկ է. և է ընդ աջմէ այ. որ և բարեխօս իսկ է 35 վասն մեր։ * Արդ՝ ո՞վ մեկնեսցէ զմեզ 'ի սիրոյն Քի. նեղութի. թէ անձ-կութի. թէ հալածանք. թէ սով. թէ մերկութի. թէ վիշտ. թէ սուր։
36 * (Որպէս և գրեալ է. ‖ վն քո մեռա-նիմք զօրհանապազ՝ համարեցաք ոպ 37 զոչխար 'ի սպանումն։) * Այլ յայսմ ամի, առաւել յաղթեմք նովաւ՝ որ 38 սիրեացն զմեզ։ * Քանզի հաստա-տեալ եմ, եթէ՝ ոչ մահ. և ոչ կեանք. և ոչ հրեշտակք. և ոչ իշխանութիք. և ոչ զօրութիք. և ոչ որ կանն. և ոչ հանդերձեալքն. և ոչ կարողութի։ 39 * Եւ ոչ բարձրութի. և ոչ խորութի. և ոչ այլինչ արարած՝ կարէ մեկնել զմեզ 'ի սիրոյ անտի Ա.Յ. որ 'ի Քս Յս 'ի Տր մեր։

‖ Սաղմ. 43. 22.

## ԳԼ. Թ.

ԽԴ.

1 Ստուգութբ ասեմ 'ի Քս, և ոչ ստեմ. վկայէն ինձ միտք իմ, 'ի Հո-2 գի սուրբ։ * Զի տրտմութի է ինձ յոյժ՝ և անպակաս ցաւք սրտի իմոյ։ 3 * ‖ Զի ուխտիւք խնդրէի, ես ինքնին նզով լինել 'ի Քէ. վասն եղբարց և ազգականաց իմոց ըստ մարմնոյ։ 4 * Որք են իսրայելացիք. որոց որդեգրու-թիւն. և փառքն. և կտակարանն. և օրէնսդրութիւն. և պաշտօնն. և աւե-5 տիքն։ * Որոց հարքն. յորոց և Քս ըստ մարմնոյն. որ է 'ի վր ամենեցուն Ած օրհնեալ յաւիտեանս. ամէն։ 6 * Ոչինչ է մարթ՝ եթէ անկած լինիցի բանն Ա.Յ. զի ոչ ամենեքեան՝ որք յիսրայելէ են՝ նոքա իսրայելացիք իցեն։ 7 * Եւ ոչ որք զաւակք աբրահամու են՝ ամենեքեան որդիք իցեն. ‖ այլ իսա-8 հակաւ կոչեսցի քեզ զաւակ։ * Այս ինքն թէ ոչ՝ որք որդիք մարմնոյն են, են Որդիք այ. այլ ‖ որդիք աւետեացն 9 համարին 'ի զաւակ։ * Քանզի աւե-տեաց իսկ է բանս այս. թէ ‖ 'ի ժա-մանակի յայսմիկ եկից՝ և եղիցի որդի 10 սառայի։ * Եւ ոչ այսչափ միայն՝ ‖ այլ և 'ի հռեբեկայ 'ի միոջէ անկողնոյ իսա 11 հակայ հօր մերոյ։ * Զի մինչչև ծնեալ էին, և մինչչև զբարի ինչ՝ կամ զչար գործեալ էին։ (զի ըստ ընտրութեան առաջադրութիւն այ հաստատեսցի։) 12 * Ոչ 'ի գործոց՝ այլ յայնմանէ որ կո-չեացն՝ ասացաւ նմա։

*‖ Եթէ

‖ Գործ. 9. 2.
1. Կորն. 15. 9.
‖ Ծննդ. 21. 12.
‖ Գաղ. 4. 28.
‖ Ծննդ. 18. 10.
‖ Ծննդ. 25. 24.

13 * Եթէ երէցն կրտսերոյն ծառայեսցէ, որպէս եւ գրեալ է. Թէ զյակոբ սիրեցի. եւ զեսաւ ատեցի: 14 * Իսկ արդ՝ զի՞նչ ասեմք. միթէ անիրաւութիւն իցէ այ. քա՛ւ լիցի: 15 * Զի մովսէսի ասէ. ողորմեցայց՝ որում ողորմեցայցն. եւ գթացայց՝ յոր գթացայցն: 16 * Ապա ոչ ըստ այնմ ինչ է՝ որ կամիցի, եւ ոչ ըստ այնմ, որ ընթանայցէ. այլ ըստ այ՝ որ ողորմի:

Ի.Զ.

17 * Քանզի ասէ գիր ցփարաւոն. թէ վասն այնորիկ կանգնեցի զքեզ, զի 'ի քեզ ցուցից զզօրութիւն իմ, եւ պատմեսցի անուն իմ ընդ ամենայն երկիր: 18 * Ապա ուրեմն ում կամի ողորմի, եւ ում կամի խստանայ: 19 * Իսկ արդ ասիցես, թէ մեղ եւս զի՞ դնէ՝ զի կամացն այ ո՞վ կայ հակառակ: 20 * Իսկ արդ դու ո՞վ ես մարդ՝ որ պատասխանի տաս այ. միթէ ասիցէ՞ ստեղծուածն ցստեղծիչն իւր՝ թէ ընդէ՞ր այդպէս արարեր զիս: 21 * Եթէ ոչ ունիցի զիշխանութիւն բրուտն կաւոյն, 'ի նմին զանգուածոյ առնել զանօթ՝ զոմն 'ի պատիւ, եւ զոմն յանարգանս: 22 * Ապա եթէ կամէր այ ցուցանել զբարկութիւն, եւ յայտնի առնել զզօրութիւն իւր. որ համբերէր բազմաւ երկայնմտութեամբ անօթոյն բարկութեան՝ պատրաստելոյն 'ի կորուստ: 23 * Զի յայտնի արասցէ զմեծութիւն փառաց իւրոց 'ի վերայ անօթոյն ողորմութեան, զորս պատրաստեաց 'ի փառս: 24 * Զորս եւ կոչեաց զմեզ. ոչ միայն 'ի հրէից՝ այլեւ 'ի հեթանոսաց: 25 * Որպէս եւ յովսէէ ասէ. կոչեցից, զոր ոչ ժողովուրդ իմ, ժողովուրդ իմ. եւ զչսիրեցեալն, սիրեցեալ. եւ զչողորմեալն, ողորմեալ: 26 * Եւ եղիցի 'ի տեղւոջ՝ յորում ասասցի նոցա՝ թէ ոչ ժողովուրդ իմ դուք. անդ կոչեսցին նոքա որդիք այ կենդանւոյ: 27 * Եսայի աղաղակէ վն իէլի. եթէ իցէ թիւ որդւոցն իէլի իբրեւ զաւազ ծովու՝ սակաւ ինչ մնացորդք մնասցեն: 28 * Զի բան մի հատանէ եւ համառօտ արդարութեամբ. զբանն համառօտ արասցէ Տր 'ի վերայ երկրի: 29 * Եւ որպ ասէ եսայի. թէ ոչ Տն զօրութեանց թողեալ էր մեզ զզաւակ, իբրեւ զսոդոմ լինէաք՝ եւ գոմորայ նմանէաք:

Օ.Կ

30 * Իսկ արդ զի՞նչ ասիցեմք. զի հեթանոսք՝ որք ոչ երթային զհետ արդարութեան՝ հասին արդարութեան. այնմ՝ արդարութեան՝ որ 'ի հաւատոց անտի: 31 * Այլ իէլ երթայր զհետ օրինացն արդարութեան՝ եւ յօրէնս արդարութեան ոչ ժամանեաց: 32 * Ընդէ՞ր. զի ոչ 'ի հաւատոց՝ այլ իբրեւ 'ի գործոց օրինաց. քանզի գթեցին նոքա առ վիմին գայթագղութեան: 33 * Որպ եւ գրեալ է. Ահաւասիկ դնեմ 'ի սիոն զվէմ գայթագղութեան՝ եւ զվէմ գլորման. եւ ամենայն, որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ:

Ծննդ. 25. 23. Մաղ. 1. 2. Ելից. 33. 19. Ելից. 9. 16. Իմաստ. 15. 7. Եսայ. 45. 9. Երեմ. 18. 6. Ովսէ. 2. 23. Ա. Պետ. 2. 10. Ովսէ. 1. 10. Եսայ. 10. 22. Եսայ. 1. 9.

## ԳԼ: Ժ:

1 Եղբարք՝ իմ կամք սրտի, եւ աղօթք առ այ վասն նց են 'ի փրկութիւն: 2 * Քանզի վկայեմ նց՝ թէ զնախանձն այ ունին, այլ ոչ գիտութեամբ: 3 * Զի տգէտք են այ արդարութեանն. եւ զիւրեանցն խնդրեն կացուցանել. զի արդարութեանն այ ոչ հնազանդեցան: 4 * Քանզի կատարած օրինացն քս է՝ յարդարութիւն ամենայն հաւատացելոց:

5 * Մովսէս գրէ զարդարութիւն, որ յօրինաց անտի է. թէ արասցէ զայն մարդ՝ կեցցէ 'ի նոսին: 6 * Իսկ զհաւատոյն արդարութենէ այսպէս ասէ. մի՛ ասիցես 'ի սրտի քում, ո՞վ ելանիցէ յերկինս՝ այսինքն է, զքս իջուցանել: 7 * Կամ ո՞վ իջանիցէ յանդունդս՝ այսինքն է՝ զքս հանել 'ի մեռելոց: 8 * Այլ զի՞նչ ասէ գիր. մերձ է բանն 'ի բերան քո՝ եւ 'ի սրտի քում է. այսինքն է՝ բանն հաւատոյ՝ զոր քարոզեմք: 9 * Զի եթէ խոստովանեսցիս բերանով քով Տր զՅս. եւ հաւատասցես 'ի սրտի քում, թէ այ յարոյց զնա 'ի մեռելոց՝ կեցցես: 10 * Զի սրտիւ հաւատայք յարդարութիւն. եւ բերանով խոստովանիք 'ի փրկութիւն: 11 * Քանզի ասէ գիր. ամենայն, որ հաւատասցէ 'ի նա՝ մի ամաչեսցէ: 12 * Զի ոչ գոյ խտիր հրէի եւ հեթանոսի. քանզի նոյն Տր է ամենեցուն. բաւական յամենեսին, որք կարդան առ նա. 13 * Զի ամ՝ որ կարդասցէ զանուն Տն՝ կեցցէ: 14 * Իսկ զիա՞րդ կարդասցեն՝ յոր ոչն հաւատացին. կամ զիա՞րդ հաւատասցեն, որում ոչ լուան. կամ զիա՞րդ լուիցեն առանց ուրուք քարոզելոյ: 15 * Կամ զիա՞րդ քարոզեսցեն, եթէ ոչ առաքեսցին. որպէս եւ գրեալ է. իբրեւ զի գեղեցիկք են ոտք աւետարանչացն խաղաղութեան, եւ աւետարանչացն բարութեան: 16 * Այլ ոչ ամենեքեան հնազանդեցան աւետարանին. եսայի աղաղակէ. Տր, ո՞ հաւատաց լսելոյ մերում: 17 * Ապա ուրեմն հաւատք 'ի լսելոյ են՝ եւ լուր 'ի բանէն քի: 18 * Այլ ասեմ, միթէ ոչ լուա՞ն. մանաւանդ՝ զի ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա. եւ ընդ ծագս տիեզերաց խօսք նոցա: 19 * Այլ ասեմ, միթէ

իէլ

Եսայ. 8. 14. և 28. 16. Ա. Պետ. 2. 7. Օ.Գ. Ղեւտ. 18. 5. Եզեկ. 20. 11. Գաղ. 3. 12. Բ. Օրին. 30. 12. Բ. Օրին. 30. 14. Եսայ. 28. 16. Յովէլ. 2. 32. Գործ. 2. 21. Եսայ. 52. 7. Եսայ. 53. 1. Յովհ. 12. 38. Սաղմ. 18. 5.

[Օր. 32. 21.] ինէ՛ ոչ լուա՛ւ. նախ մովսէս ասէ՝ Ես նախանձեցուցից զձեզ ոչինչ ժողովրդեամբ. և ազգաւ անմտաւ զկծեցուցից զձեզ: 20 *Բայց եսայի համարձակի [Եսայ. 65. 1.] իսկ՝ և ասէ. Գտայ այնոցիկ՝ որք զիս ոչ խնդրէին. յայտնի եղէ այնոցիկ՝ որք զինէն ոչ հարցանէին: 21 *Առ [Եսայ. 65. 2.] իսրայէլ ասէ. զօր ա՟մ ձգեցի զձեռս իմ առ ժողովուրդ անհաւան և հակառակօղ:

## ԳԼ. ԺԱ.

ՕՕ

1 Իսկ արդ ասեմ, միթէ մերժեա՞ց Ա՟Ծ զժողովուրդ իւր. քա՛ւ լիցի: քանզի և ես իսրայելացի եմ. 'ի զաւակէ աբրահամու՝ յազգէ բենիամենի: 2 *Ո՛չ մերժեաց Ա՟Ծ զժողովուրդ իւր, զոր յառաջն ծանեաւ. միթէ ոչ գիտէք, 'յեղիայ զինչ ասէ գիր. որպէս [3 Թագ. 19. 10.] ամբաստան լինի ա՟յ զիլէ: 3 *Տէր, զմարգարէս քո կոտորեցին՝ և զսեղանս քո կործանեցին. ես մնացի միայն, և խնդրեն զանձն իմ: 4 *Այլ զինչ [3 Թագ. 19. 18.] ասէ նմա պատասխանին Ա՟Ծային. Թողի ինձ, ասէ՝ եօթն հազար այր. որք ոչ կրկնեցին զծունր բահաղու: 5 *Նոյնպէս և յայսմ ժամանակի, մնացորդք՝ ըստ ընտրուե՟ շնորհացն եղեն: 6 *Իսկ եթէ շնորհօք՝ ո՛չ ևս 'ի գործոց. ապա թէ ոչ՝ շնորհքն՝ ո՛չ ևս շնորհք լինին: 7 *Իսկ արդ՝ զոր խնդրէրն իսրայէլ [ընտրուե՟] այնմ ոչ եհաս. բայց ընտրուե՟ն եհաս. և այլքն կուրացան: 8 *Որ՟պ և գրեալ է. [Եսայ. 6. 9.] Ետ նոցա Ա՟Ծ զհոգի յիմարուե՟. աչս՝ որովք ոչ տեսանիցեն. և ականջս՝ [Մատ. 13. 14.] որովք ոչ լսիցեն, մինչև ցայսօր ժամանակի: և դաւիթ ասէ: 9 *Եղիցին [Յովհ. 12. 40.] սեղանք նոցա յորոգայթ, և 'յորս՝ և 'ի գայթագղութի, և 'ի հատուցումն [Գործ. 28. 26.] նոցին: 10 *Խաւարեսցին աչք նոցա՝ զի մի՛ տեսցեն. և զթիկունս նոցա հանապազ կորացո՛: [Սաղմ. 68. 23. և 24.] 11 *Իսկ արդ ասեմ, միթէ վասն այնորիկ յանցեան, զի կործանեսցին. քա՛ւ լիցի. այլ նո՟ց յանցանօքն փրկութի հեթանոսաց. զի նախանձ արկցէ նոցա: 12 *Իսկ եթէ յանցանքն նո՟ց մեծութի աշխարհի. և պարտութի նո՟ց՝ մեծութի հեթանոսաց. ո՞րչափ ևս առաւել լրութի նոցա:

ԻԿ

13 *Այլ ձեզ ասեմ հեթանոսացդ՝ ցորքան ժամանակս իցեմ հեթանոսաց առաքեալ, զպաշտօնն իմ փառաւոր առնեմ: 14 *Ոչ թերևս նախանձ արկից նոցա մարմնով իմով՝ և ապրեցուցից զոմանս 'ի նոցանէ: 15 *Ոչ եթէ մերժումն նո՟ց հաշտուի աշխարհի է. իսկ ընդունելութին զի՞նչ իցէ՝ եթէ ոչ կենդանութի 'ի մեռելոց: 16 *Իսկ եթէ սկիզբն սուրբ է՝ և զանգուածն. և եթէ արմատն՝ ապա և ոստքն:

17 *Եթէ յոստոց անտի ոմանք փշրեցան. և դու որ ձիթենիդ վայրենի էիր՝ պատուաստեցար 'ի նոսա. և բաժանորդ եղեր արմատոյն՝ և պարարտութե՟ ձիթենւոյն: 18 *Մի՛ պարծիր առ ոստովքն, ապա եթէ պարծիցիս՝ ոչ եթէ դու զարմատն 'ի վեր ունիս. այլ արմատն զքեզ: 19 *Իսկ արդ ասիցես, ոստքն փշրեցան՝ զի ես պատուաստեցայց: 20 *Բարւոք է՝ անհաւատութե՟ն փշրեցան. և դու հաւատովք հաստատեցար. մի՛ հպարտանար՝ այլ երկի՛ր: 21 *Ոչ թէ Ա՟Ծ 'ի բուն ոստոյն ոչ խնայեաց. գուցէ երբէք և 'ի քեզ ոչ խնայիցէ: 22 *Արդ՝ տե՛ս զքաղցրուի և զսաստկութի՟ն ա՟յ. 'ի վերայ կործանելոցն սաստկութի, և 'ի վերայ քո քաղցրութի՟ն ա՟յ, եթէ կացցես 'ի նմին քաղցրութե՟, ապա թէ ոչ՝ և դու կոտորեսցիս: 23 *Նոքա եթէ ոչ 'ի նմին անհաւատութե՟ կացցեն, պատուաստեսցին. զի կարօղ է Ա՟Ծ միւս անգամ պատուաստել զնոսա: 24 *Ոչ եթէ դու 'ի բուն 'ի վայրենւոյ ձիթենւոյ անտի հատար՝ և յանբնուն 'ի բարւոք ձիթենւոջն պատուաստեցար. ո՞րչափ ևս առաւել նոքա՝ որք բնութն իսկ են՝ պատուաստեսցին յիւրեանց ձիթենւոջն:

ԻԲ

25 *Ոչ կամիմ եղբարք եթէ տգէտք իցէք խորհրդոյս այսմիկ. (զի մի՛ յանձինս ձեր իցէք իմաստունք.) զի կուրութի փոքր 'ի շատէ եղև իսր՟. մինչև 26 լրումն հեթանոսաց մտցէ: *Եւ ապա ա՟մ իսրայէլ կեցցէ. որ՟պ և գրեալ է. Եկեսցէ [Եսայ. 59. 20.] 'ի սիօնէ փրկիչ՝ և դարձուսցէ զամ 27 բարշտութիւն 'ի յակոբայ: *Եւ այս նոցա՝ որ յինէն ուխտ՝ յորժամ բարձից զմեղս նոցա: 28 *Ըստ աւետարանին թշնամիք են վասն ձեր. ըստ ընտրութե՟ն սիրելիք վասն հարցն: 29 *Քանզի անզեղջք են շնորհք և կոչումն ա՟յ:

30 *Ոչ որպէս և դուք երբեմն ապստամբք էիք յԱ՟Յ՝ և արդ զողորմութի գտէք առ նո՟ց ապստամբութե՟ն: 31 *Նոյնպէս և նոքա այժմ ապստամբք եղեն առ ձերով ողորմութե՟դ. զի և նոքա զողորմութի գտցեն: 32 *Քանզի արգել Ա՟Ծ զամենեսին յանհաւանութե՟, զի ամենեցուն ողորմեսցի:

33 *Ո՜վ խորք մեծութե՟, և իմաստութե՟, և գիտութե՟ն Ա՟Յ. ո՞րպէս զի անանց քննելոց են դատաստանք նո՟ր. և անանց [Իմաստ. 9. 13.] զննելոյ ճանապարհք նո՟ր: 34 *Ո՞վ գիտաց զմիտս Տ՟ն, կամ ո՞վ խորհրդակից [Եսայ. 40. 13.] եղև նմա: 35 *Կամ ո՞վ ետ նմա փոխ, [1. Կոր. 2. 16.] և առնուցու զփոխարէն 'ի նմանէ:

* Զի 'ի նմանէ՝ և նովաւ՝ և 'ի նոյն ամ. նմա փառք յաւիտեանս, ամէն: 36

## Գլ. ԺԲ.

1 Աղաչեմ զձեզ եղբարք գթութեն այ՝ ‖ պատրաստել զմարմինս ձեր պատարագ կենդանի. սուրբ՝ հաճոյ այ՝ զխօսուն պաշտօնդ ձեր:
2 * Եւ մի կերպարանիք կերպարանօք աշխարհիս այսորիկ. այլ նորոգեցարուք 'ի նորոգութիւն մտաց ձերոց. ‖ առ 'ի քննել ձեզ զկամս, և եթէ զինչ են կամքն այ՝ բարին, և հաճոյն, և կատարեալն:
3 * Զայս ասեմ շնորհօքն այ՝ որք տուեալ են ինձ, ամի՛ որք են 'ի ձեզ. մի առաւել ինչ խորհիլ քան զարժանն խորհելոյ. այլ խորհիլ 'ի զգաստանալ՝ ‖ իւրաքանչիւր՝ որպէս և բաժանեաց Ած զչափ հաւատոյ:
4 * Որպ 'ի միում մարմնի անդամս բազումս ունիմք. և անդամքն ամենեքեան ոչ զնոյն գործ ունին:
5 * Նոյնպէս և բազումքս մի մարմին եմք 'ի Քս. այլ իւրաքանչիւր միմեանց անդամք եմք:
6 * Բայց ունիմք մեք շնորհս ըստ շնորհացն, որք տուեալք են մեզ այլ և այլ: եթէ մարգարէութի ըստ չափուն հաւատոյ:
7 * Եթէ պաշտօն, ըստ պաշտամանն. եթէ որ ուսուցանէն՝ ըստ վարդապետութեն:
8 * Եթէ որ մխիթարէն, ըստ մխիթարութեն: որ առատն է, զուարթութբ: որ վերակացուն է, փութով: որ ողորմի, լրջմտութբ:
9 * Սէր առանց կեղծաւորութե: ‖ ատել զչար. զհետ երթալ բարեաց:
10 * ‖ Եղբայրսիրութբ առ միմեանս գթածք: 'ի պատիւ զմիմեամբք եղանել:
11 * Ի փոյթ՝ մի վեհերոտք: հոգւով եռացէք: Տն ծառայեցէք:
12 * Յուսով խնդացէք: նեղութե համբերեցէք: աղօթից ստէպ կացէք:
13 * Ի պէտս սրբոց հաղորդեցարուք: ‖ զհիւրասիրութե զհետ երթայք:
14 * Օրհնեցէք զհալածիչս ձեր. օրհնեցէք, և մի անիծանէք:
15 * Խնդալ ընդ խնդացօղս: լալ ընդ լացօղս:
16 * Զնոյն միմեանց խորհիցիք: մի ամբարտաւանիք՝ այլ ընդ խոնարհս զիջանիցիք: ‖ մի լինիք իմաստունք յանձինս ձեր:
17 * Մի ումեք չարի զչար հատուցանէք: ‖ խորհեցարուք զբարիս, մի միայն առաջի այ, այլ և առաջի ամ մարդկան:
18 * ‖ Եթէ հնար ինչ իցէ ձեզ՝ ընդ ամ մարդկան զխաղաղութիւն ունիցիք:
19 * ‖ Մի զանձանց վրէժխնդրեք սիրելիք: այլ տուք տեղի բարկութե: քանզի գրեալ է. ‖ իմ է վրէժխնդրութի. և ես հատուցից՝ առէ Տր:
20 * ‖ Այլ եթէ քաղցեալ է թշնամին քո՝ հաց տուր նմա: և եթէ ծարաւի՝ ջուր տուր նմա: զայս արարեալ՝ կայծակունս հրոյ կուտեսցես 'ի գլուխ նր:
21 * Մի յաղթիր 'ի չարէն. ‖ այլ յաղթեա՛ բարեաւն չարին:

## Գլ. ԺԳ.

1 Ամենայն ‖ անձն որ ընդ իշխանութբ է՝ 'ի հնազանդութե կացցէ: քանզի ոչ ուստեք է իշխանութիւն, եթէ ոչ յԱծ: և որք ենն, յԱծ կարգեալ են:
2 * Այսուհետև որ հակառակ կայ իշխանութեն, այ հրամանին հակառակ կայ: և որք հակառակ կան, անձանց դատաստանս ընդունին:
3 * Զի իշխանքն ոչ են յերկիւղ բարեաց գործոց՝ այլ չարաց: կամի՞ս չերկնչիլ յիշխանութէ անտի՝ զբարիս գործեա՛. և ընկալցիս զգովութի 'ի նմանէ:
4 * Զի այ պաշտօնեայ է քեզ 'ի բարիս: ապա եթէ զչար գործիցես, երկի՛ր: զի ոչ եթէ վայրապար ածեալ է զսուսեր ընդ մէջ: զի Ած սպասաւոր է՝ վրէժխնդիր 'ի բարկութի, այնմ, որ զչարն գործիցէ:
5 * Վն որոյ հարկ է հնազանդ լինել՝ ոչ միայն վասն բարկութեն. այլև վասն մտացն խղճի:
6 * Վն այնորիկ և հարկս հարկանէք՝ զի Այ սպասաւորք են 'ի նոյն կանխեալք:
7 * ‖ Արդ՝ հատուցէք ամենեցուն զպարտս: որում՝ զհարկ՝ զհարկն: որում զմաքս՝ զմաքսն: որում զերկիւղ՝ զերկիւղն: որում զպատիւ՝ զպատիւն:
8 * Եւ մի ումեք պարտապան գտանիցիք. բայց զմիմեանս սիրելոյ: զի որ սիրէ զընկերն, զօրէնս կատարէ:
9 * ‖ Զի մի շնայցես: և մի սպանանիցես: և մի գողանայցես: և մի սուտ վկայիցես: և մի ցանկանայցես: և եթէ այլ ինչ պատուիրան է՝ յայն բան բովանդակի: ‖ եթէ սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո:
10 * Սէր ընկերի իւրում զչար ոչ առնէ: լրումն օրինացն սէր է:
11 * Եւ զայս գիտասջիք վն ժամանակիս: զի արդ ժամ իսկ է մեզ 'ի քնոյ զարթնուլ: զի այժմ մերձ է մեզ փրկութի, քանզի յորժամ հաւատացաքն:
12 * Գիշերն մերժեցաւ՝ և տիւն մերձեցաւ: 'ի բաց արասցուք այսուհետև զգործսն խաւարին. և զգեցցուք զզէնն լուսոյ:
13 * Իբրև 'ի տուընջեան զգաստացեալք շրջիցուք. ‖ մի անառակութբք՝ և արբեցութբք: և մի խառնանկողնօք՝ և պղծութբք: և մի նախանձու՝ և հակառակութբ:
14 * ‖ Այլ զգեցարուք զՏր Յս Քս. և մարմնոյ խնամ մի տանիք 'ի ցանկութիս:

Գլ.

## Գլ ։ ԺԴ ։

1 Այլ զտկարացեալն ՚ի հաւատս ընկալարուք՝ մի՛ խղճի՛ւ երկմտութեց ։ 2 * Ոմն հաւատայ ուտել զա՟մ ։ և որ հիւանդն է, զբանջար կերիցէ ։ 3 * Որ ուտէն, զայն, որ ոչն ուտէ՝ մի՛ անարգեսցէ ։ և որ ոչն ուտէ, զայն, որ ուտէն, մի՛ դատեսցէ ։ քանզի Ա՟ծ զնա ընկալաւ ։ 4 * ‖ Դու ո՞վ ես՝ որ դատես զայլոյ ծառայ ։ իւրում Տ՟ն կայ՝ կամ անկանի ։ բայց կացցէ՝ զի կարող է Տ՟ր հաստատել զնա ։ 5 * Ոմն պահէ օրըստօրէ ։ և ոմն պահէ զօրհանապազ ։ իւրաքանչիւրոք զիւր միտս հաճեսցի ։ 6 * Որ խորհի զօրն՝ Տ՟ն խորհի ։ և որ ոչն խորհի զօրն, Տ՟ն չխորհի ։ և որ ուտէ՝ Տ՟ն ուտէ՝ և գոհանայ զա՟յ ։ և որ ոչն ուտէ՝ Տ՟ն չուտէ՝ և գոհանայ զԱ՟յ ։ 7 * Զի ոչոք ՚ի մէնջ անձամբ կեայ ։ և ո՛չ անձամբ մեռանի ։ 8 * Եթէ կեամք՝ Տ՟ն կեամք ։ և եթէ մեռանիմք՝ Տ՟ն մեռանիմք ։ և արդ՝ եթէ կեամք, և եթէ մեռանիմք՝ Տ՟ն եմք ։ 9 * Քանզի ՚ի նոյն իսկ և Ք՟ս մեռաւ և եկեաց ։ զի մեռելոց և կենդանեաց առ հասարակ տիրեսցէ ։ 10 * Դու զի՞ դատես զեղբայր քո ։ կամ ընդէ՞ր անարգանես զեղբայր քո ։ ‖ Քանզի ամենեքեան կալոց եմք առաջի ատենին Ք՟ի ։ 11 * Զի գրեալ է ։ ‖ Կենդանի եմ ես՝ ասէ Տ՟ր ։ զի ինձ կրկնեսցի ա՟մ ծունր՝ և ա՟մ լեզու խոստովան եղիցի Ա՟յ ։ 12 * Ապաքէն իւրաքանչիւրոք ՚ի մէնջ ընդ անձին համարս տացէ Ա՟յ ։ 13 * Այսուհետև՝ մի՛ զմիմեանս դատեսցուք ։ այլ առաւել զայս դի՛ք ՚ի միտ՝ չդնել զգայթագղութ՟ի եղբօրն † ։ 14 * Գիտեմ, և հաստատեալ եմ ՚ի Ք՟ս Յ՟ս, զի ոչինչ է պիղծ նովաւ ։ բայց այնմ, որ համարիցի ոք ինչ պիղծ՝ նմա է պիղծ ։ 15 * Զի եթէ վ՟ն կերակրոյ եղբայրն քո տրտմի՝ ո՛չ ևս սիրով գնայցեր ։ ‖ մի՛ կերակրովք քո զնա կորուսաներ, վ՟ն որոյ Ք՟սն մեռաւ ։ 16 * Մի՛ հայհոյեսցի բարին ձեր ։ 17 * Զի ո՛չ է արքայութ՟իւն Ա՟յ կերակուր և ըմպելի ։ այլ արդարութ՟ի, և խնդութ՟ի, և խաղաղութ՟ի ՚ի Հոգի ս՟բ ։ 18 * Զի որ յայսմ ծառայէ Ք՟ի, հաճոյ է Ա՟յ՝ և ընտիր մարդկան ։ 19 * Ապա այսուհետև զհետ երթիցուք խաղաղութ՟ե և շինութ՟ե որ առ միմեանս է ։ 20 * Մի՛ վ՟ն կերակրոյ քակեր զգործն Ա՟յ ։ ‖ ա՟մ ինչ ս՟բ է ։ այլ չար այնմ մարդոյ է՝ որ խղճիւն ուտիցէ ։ 21 * ‖ Բա՛ր է ո՛չ ուտել զմիս, և ո՛չ ըմպել զգինի ։ և ո՛չ որով եղբայրն քո գայթագղի, կամ 22 դթէ, կամ տկարանայ ։ * Դու ապաքէն հաւատս ունիս ։ կա՛լ առանձին առաջի Ա՟յ ։ երանի որ ոչ դատիցէ զանձն, որով զընկերն փորձիցէ ։ 23 * Բայց որ խղճէն, թէպէտ և ուտիցէ՝ դատապարտեալ է՝ զի ո՛չ ըստ հաւատոց ։ զի ա՟մ ինչ՝ որ ոչ ՚ի հաւատոց է՝ մեղք են ։ (Այլ այնմ, որ կարողն է հաստատել զձեզ ըստ աւետարանիս իմում ։ և ըստ քարոզութ՟ենս Յ՟ի Ք՟ի ։ ըստ յայտնութ՟ե խորհրդոյն՝ ժամանակօքն յաւիտենից լռեցելոյ ։ և յայտնելոյ այժմիկ ՚ի ձեռն գրոց մարգարէականաց՝ ըստ հրամանի մշտնջենաւորին Ա՟յ ։ ՚ի հնազանդութ՟ի հաւատոց՝ յա՟մ հեթանոսս ծանուցելոյ ։ միայնոյ իմաստնոյն Ա՟յ ։ ՚ի ձեռն Յ՟ի Ք՟ի որում փառք յաւիտեանս ։ ամէն ։)

‖ Յակ. 4. 13. — ‖ 2. Կորն. 5. 10. — ‖ Եսայ. 45. 24. Փիլիպ. 2. 10. — † կամ խոչ ծանուցանե — ‖ 1. Կորն. 8. 11. — ‖ Տիտոս 1. 15. — ‖ 1. Կորն. 8. 13.

## Գլ ։ ԺԵ ։

1 Պարտ է մեզ՝ որք կարողքս եմք՝ զտկարութ՟ի տկարացն բառնալ ։ և մի՛ անձանց և եթ հաճոյ լինիլ ։ 2 * Այլ իւրաքանչիւրոք ՚ի մէնջ ընկերին հաճոյ լիցի ՚ի բարիս՝ վ՟ն շինութ՟ե ։ 3 * Քանզի և Ք՟ս ո՛չ եթէ անձին հաճոյ եղև ։ այլ ո՟պ և գրեալ է ։ ‖ Նախատինք նախատչաց քոց անկան ՚ի վերայ իմ ։ 4 * Բայց որ ինչ գրեցաւն՝ ՚ի մեր վարդապետութ՟ի գրեցաւ ։ զի համբերութ՟բ և մխիթարութ՟բ գրոց զյոյսն ընկալցուք ։ 5 * Այլ Ա՟ծ համբերութ՟ե և ա՟մ մխիթարութ՟ե, ‖ տացէ ձեզ զնոյն խորհիլ ընդ միմեանս ըստ Յ՟ի Ք՟ի ։ 6 * Զի միաբանութ՟բ ՚ի մի բերան փառաւո՛ր առնիցէք զԱ՟ծ ։ և զՀայր Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի ։ 7 * Վ՟ն որոյ ընկալարո՛ւք զմիմեանս ։ ո՟պ և Ք՟ս ընկալաւ զձեզ ՚ի փառս Ա՟յ ։ 8 * Այլ ասեմ ։ թէ Ք՟ի սպասաւոր թլփատութ՟ենն լինիլ՝ վ՟ն ճշմարտութ՟ենն Ա՟յ էր ։ առ ՚ի հաստատուն առնելոյ զաւետիս հարցն ։ 9 * Այլ հեթանոսք վ՟ն ողորմութ՟ե փառաւոր առնեն զԱ՟ծ ։ որպէս և գրեալ է ։ ‖ Վ՟ն այսորիկ գոհացայց զքեն ՚ի հեթանոսս ։ և անուան քում սաղմոս ասացից ։ 10 * Եւ դարձեալ ասէ ։ Ուրախ եղերո՛ւք հեթանոսք ընդ ժողովրդեան նր ։ 11 * Եւ դարձեալ՝ թէ ։ ‖ Օրհնեցէ՛ք ա՟մ հեթանոսք զՏ՟ր ։ և գովեցէ՛ք զնա ա՟մ ժողովուրդք ։ 12 * Եւ դարձեալ եսայի ասէ ։ ‖ Եղիցի արմատն յեսսեայ ։ և որ կանգնելոց է իշխան հեթանոսաց՝ ՚ի նա հեթանոսք յուսասցին ։ 13 * Այլ Ա՟ծ յուսոյ՝ լի՛ արասցէ զձեզ ա՟մ խնդութ՟բ և խաղաղութ՟բ ։ առաւելուլ ձեզ յուսով զօրութ՟բ Հոգւոյն սրբոյ ։

‖ Սաղմ. 68. 10. — ‖ 1. Կորն. 1. 10. — ‖ 2 Թագ. 22. 50. Սաղմ. 17. 50. — ‖ Սաղմ. 116. 1. — ‖ Եսայ. 11. 10.

Լ.Գ

14 *Հաստատեալ եմ և ես ինքնին, եղբարք իմ, վ՟ն ձեր. զի դուք լի էք բարութեամբ. լի էք ամ՟ գիտութեամբ. կարօղք էք զմիմեանս խրատել։
15 *Այլ համարձակագոյնս գրեցի առ ձեզ, եղբարք իմ, փոքր 'ի շատէ. իբրև յիշեցուցանելով ձեզ վ՟ն շնորհացն՝ որք տուեալք են ինձ յա՟յ։
16 *Լինել ինձ սպասաւոր Յ՟ի Ք՟ի 'ի հեթանոսս. ըղձակերտս առնել զաւետարանն ա՟յ. զի եղիցի պատարագն հեթանոսաց ընդունելի՝ սրբեալ Հոգւովն սրբով։
17 *Ունիմ պարծանս 'ի Ք՟ս Յ՟ս առ Ա՟ծ։
18 *Քանզի ոչ իշխեմ խօսել ինչ՝ զոր ոչ գործեաց Ք՟ս ինև 'ի հնազանդութի հեթանոսաց բանիւք և արդեամբք։
19 *Զօրութբ նշանաց և արուեստից՝ զօրութբ Հոգւոյն սրբոյ. որպէս ինձ յե՟մէ և շուրջ՝ մինչև 'ի կողմանս Իլլիւրիկացւոց լնուլ զաւետարանն Ք՟ի։
20 *Այնպէս առատացեալ յաւետարանել. ոչ ուր անուանեցաւ Ք՟ս. զի մի՛ իբրև յայլոց հիման վերայ շինիցեմ. այլ ո՟պ և գրեալ է։

‖ Եսայ. 52. 15.

21 *‖Թէ որոց ոչ պատմեցաւ վասն նր՟ տեսցեն. և որոց ոչ իցէ լուեալ՝ 'ի միտ առցեն։
22 *Վ՟ն որոյ շատ խափանեցայ գալ առ ձեզ †։

† Եւ խափանեցայ մինչև ցայժմ.

23 *Բայց արդ ոչևս գոյ ինձ տեղի 'ի կողմանս յայսոսիկ. և անձուկ յոյժ ունիմ 'ի բազում ամաց գալ առ ձեզ։
24 *Յորժամ անցանիցեմ 'ի Սպանիայ՝ ակնունիմ յանցանելն առ նոսա՝ տեսանել զձեզ. և 'ի ձէնջ յուղարկել անդր. եթէ նախ իսկ փոքր 'ի շատէ ձեօք լցայց։
25 *Բայց այժմ երթամ յե՟մ պաշտել զս՟ուրբսն։
26 *Քանզի հաճոյ թուեցաւ Մակեդոնացւոցն և Աքայեցւոցն հաղորդութի ինչ առնել ը՟ աղքատս սրբոցն՝ որք են յե՟մ։
27 *Հաճոյ թուեցաւ՝ քանզի և պարտապանք իսկ են նոցա. ‖ զի եթէ հոգևորացն նց՟ հաղորդք եղեն հեթանոսք՝ պարտին և մարմնաւորացն կցորդ լինել նց՟։

‖ 1. Կոր. 9. 11.

28 *Արդ զայս կատարեալ՝ և կնքեալ զպտուղ նց՟՝ անցից առ ձեօք 'ի Սպանիա։
29 *Զայս գիտեմ, զի 'ի գալն առ ձեզ՝ լրումն օրհնութեն աւետարանին Ք՟ի եկից։

Լ.Ե

30 *Աղաչեմ զձեզ եղբարք 'ի ձեռն Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի. և սիրովն Հոգւոյն սրբոյ՝ պատերազմակից լինել ինձ յաղօթս վ՟ն իմ առ Ա՟ծ։
31 *Զի ապրեցայց յապստամբացն, որք 'ի Հրէաստանի են. և պաշտօնն իմ որ յե՟մ, ընդունելի լիցի սրբոցն։
32 *Զի խնդութբ եկեալ առ ձեզ 'ի կամս ա՟յ, հանգեայց ընդ ձեզ։
33 *Եւ Ա՟ծ խաղաղութեն եղիցի ընդ ձեզ ամենեսին. Ամէն։

## Գլ. ԺԶ.

1 Յանձն առնեմ ձեզ զփիբէ զքոյր մեր, որ է սպասաւոր եկեղեցւոյն Կենքրացւոց։
2 *Զի զնա ընկալջիք 'ի Տ՟ր՝ արժանի սրբոց. և վերակացու լինիջիք նմա՝ յոր պէտս իրաց և կօչեսցէ զձեզ. քանզի և նա վերակացու եղև բազմաց. և ինձ իսկ գլխովին։
3 *Ողջոյն տաջիք ‖ Պրիսկեայ՝ և Ակւղեայ՝ գործակցաց իմոց 'ի Ք՟ս Յ՟ս։

‖ Գործք. 18. 2. 26.

4 *(Որք ընդ անձին իմոյ զիւրեանց պարանոցս մատուցին. զորոց ոչ ես միայն գոհանամ, այլ և ամ՟ եկեղեցիք հեթանոսաց.)
5 *Եւ առ տնին եկեղեցւոյն նոցա. Ողջոյն տաջիք Եպենետեայ սիրելւոյ իմոյ. որ է պտուղ Ասիացւոց 'ի Ք՟ս։
6 *Ողջոյն տաջիք Մարիայ՝ որ բազում վաստակս վաստակեաց 'ի ձեզ։
7 *Ողջոյն տաջիք Անդրոնիկեայ, և Յունեայ ազգականաց իմոց՝ և գերեկցաց. որք երևելիքն իսկ են յառաքեալս. որք և յառաջ իսկ քան զիս եղեն 'ի Ք՟ս։
8 *Ողջոյն տաջիք Ամպղեայ սիրելւոյ իմոյ 'ի Տ՟ր։
9 *Ողջոյն տաջիք Ուրբանեայ գործակցի իմոյ 'ի Տ՟ր. և Ստաքեայ սիրելւոյ իմոյ։
10 *Ողջոյն տաջիք Ապեղեայ՝ որ ընտիրն է 'ի Տ՟ր։
11 *Ողջոյն տաջիք նոցա, որք յԱրիստաբուղեայ տանէ անտի են. ողջոյն տաջիք Հերոդիոնայ ազգականի իմոյ. ողջոյն տաջիք այնոցիկ՝ որք 'ի Նարկիսեայ տանէն իցեն 'ի Տ՟ր։
12 *Ողջոյն տաջիք Տրիփոնեայ՝ և Տրիփոսեայ վաստակաւորաց 'ի Տ՟ր. ողջոյն տաջիք Պերսիդեայ սիրելւոյ, որ բազում վաստակս վաստակեաց 'ի Տ՟ր։
13 *Ողջոյն տաջիք Ռուփեայ ընտրելոյ 'ի Տ՟ր. և մօր նորա և իմոյ։
14 *Ողջոյն տաջիք Ասինկրիտեայ, Փղեգոնտեայ, Երմեայ, Պատրոբեայ, Երմեայ. և որք ընդ նոսա եղբարք իցեն։
15 *Ողջոյն տաջիք Փիղողոգեայ, և Յուղեայ. Ներեայ՝ և քեռ նորա. և Ողիմպեայ. և որք ընդ նոսա ս՟րբք ամենեքին իցեն։
16 *Ողջոյն տաջիք միմեանց 'ի համբոյր սրբութեն. ողջոյն տան ձեզ ամենայն եկեղեցիք Ք՟ի։

Լ.Զ

17 *Աղաչեմ զձեզ եղբարք՝ դիտել զայնպիսիսն, որք զհերձուածս և զգայթագղութիւնս առնիցեն արտաքոյ վարդապետութեն՝ զոր դուքն ուսայք. և խորշեցարուք 'ի նոցանէ։
18 *Զի այնպիսիքն Տ՟ն մերոյ Ք՟ի ոչ ծառայեն, այլ իւրեանց որովայնին. և քաղցրաբանութբ, և օրհնութբ պատրեն զսիրտս անմեղաց։
19 *Զի ձեր հնազանդութիւնդ առ ամենեսեան հասեալ է.

և

և արդ՝ 'ի ձեզ ուրախ եմ։ բայց կամիմ զձեզ իմաստունս լինել 'ի բարիս՝ և անմեղս 'ի չարիս ։ 20 * Այլ Այծ խաղաղութեան խորտակեսցէ զսատանայ ընդ ոտիւք ձերովք մերձ ը մերձ ։ շնորհք Տն մերոյ Յի Քի ընդ ձեզ ։

21 * Ողջոյն տայ ձեզ տիմոթէոս եղբայր և գործակից իմ։ և ղուկիոս. և յասոն. և սոսիպատրոս ազգականք իմ ։ 22 * Ողջոյն տամ ձեզ՝ և ես տերտիոս, որ զթուղթս գրեցի՝ 'ի Տր ։ 23 * Ողջոյն տայ ձեզ գայիոս ասպնջական իմ, և ամ եկեղեցւոյն ։ ողջոյն տայ ձեզ երաստոս շահապ քաղաքիս . 24 և կուարտոս եղբայր ։ * Շնորհք Տն մերոյ Յի Քի ընդ ձեզ ը ամենեսին ամէն ։ 25 * Այլ այնմ, որ կարողն է հաստատել զձեզ ըստ աւետարանիս իմում, և ըստ քարոզութեան Յի Քի ։ ըստ յայտնութեան խորհրդոյս՝ ժամանակօքն յաւիտենից լռեցելոյ ։ 26 * (Այլ յայտնելոյ այժմիկ 'ի ձեռն գրոց մարգարէականաց. ըստ հրամանի մշտնջենաւորին Այ. 'ի հնազանդութիւն հաւատոց ) յամ հեթանոսս ծանուցելոյ ։ 27 * Միայնոյ իմաստնոյն այ 'ի ձեռն Յի Քի. նմա պատիւ և փառք յաւիտեանս յաւիտենից. Ամէն

Գործ. 16. 1.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ԿՈՐՆ ԹԱՑԻՍՆ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ ։

Գլուխ Առաջին ։



ՊՕՂՈՍ ԿՈՉԵՑԵԱԼ առաքեալ Յի Քի կամօքն այ. և սոսթենէս եղբայր ։ 2 * Եկեղեցւոյ այ՝ որ է 'ի կորնթոս՝ նուիրելոց 'ի Քս Յս, կոչեցելոց սրբոց՝ ամենեքումբք հանդերձ, որք կարդան զանուն Տն մերոյ Յի Քի յամ տեղիս նոցա՝ և մեր ։ 3 * Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն ։ յայ Հօրէ մերմէ, և 'ի Տէ Յէ Քէ ։ 4 * Գոհանամ զայ իմոյ յամ ժամ վս ձեր՝ 'ի վերայ շնորհացն այ՝ որք տուեալք են ձեզ 'ի Քս Յս ։ 5 * Զի յամի մեծացայք դուք նովաւ, ամի բանիւ, և ամի գիտութեամբ ։ 6 * Որպէս և վկայութիւն Քի հաստատեցաւ 'ի ձեզ ։ 7 * Զի դուք մի նուազիցիք. և մի իւիք շնորհօք ։ ակն կալեալք յայտնութեան Տն մերոյ Յի Քի ։ 8 * Որ և հաստատեսցէ զձեզ մինչև 'ի կատարած՝ անարատս՝ յօրն Տն մերոյ Յի Քի ։ 9 * Հաւատարիմ է Այծ. որով կոչեցայք 'ի հաղորդութիւն Որդւոյ նր Տն մերոյ Յի Քի ։ 10 * Աղաչեմ զձեզ եղբարք անուամբ Տն մերոյ Յի Քի ։ զի զնոյն բան ունիցիք ամենեքեան ։ և մի իցեն 'ի ձեզ հերձուածք ։ քանզի էիք հաստատեալք 'ի նոյն միտս և 'ի նոյն հանճար ։ 11 * Ազդ եղև ինձ վասն ձեր եղբարք 'ի քղոէացւոց անտի, թէ հակառակութիւնք են 'ի ձեզ ։ 12 * Այս արդ ասեմ իսկ. եթէ իւրաքանչիւրոք 'ի ձէնջ ասէ՝ ես պօղոսեան եմ, և միւսն եթէ ես ապօղոսեան ։ և միւսն եթէ ես կեփայեան ։ և միւսն եթէ ես Քսեան ։ 13 * Իսկ արդ՝ բաժանեա՞լ ինչ իցէ Քս ։ միթէ պօղոս 'ի խաչ ելեալ իցէ վս ձեր. կամ յանուն պօղոսի՞ մկրտեցայք ։ 14 * Գոհանամ զայ իմոյ՝ զի ոչ զոք 'ի ձէնջ մկրտեցի՝ բայց միայն զկրիսպոս՝ և զգայիոս՝ զի մի ոք ասիցէ՝ 15 * Թէ յիմ անուն մկրտեցայք ։ 16 * Տալ եւս կնիք և տանն ստեփանանեայ ։ զայլ ոք ոչ գիտեմ ամենևին թէ մկրտեցի ։ 17 * Զի ոչ առաքեաց զիս Քս մկրտել՝ այլ աւետարանել ։ ոչ ճարտարութբ բանից, զի մի ընդունայն լիցի խաչն Քի ։ 18 * Զի ճառ խաչին, կորուսելոցն յիմարութիւն է. այլ փրկելոցս մեզ զօրութիւն այ ։ 19 * Զի գրեալ է ։ կորուսից զիմաստութիւն իմաստնոց. և զխորհուրդս խորհրդականաց արհամարհեցից ։ 20 * Ուր իմաստունն. ուր դպիր. ուր քննիչ աշխարհիս այսորիկ ։ ոչ ապաքէն յիմարեցոյց Այծ զիմաստութիւն աշխարհիս այսորիկ ։ 21 * Քանզի իմաստութեամբն Այ ոչ ծանեաւ աշխարհ իմաստութեամբն զԱծ. հաճեցաւ Այծ յիմարութբ քարոզութեանն՝ ապրեցուցա_

Քի — 1. Թես. 5. 24. — Գործ. 18. 24. — Գործ. 18. 8. — 2. Պետ. 1. 16. — Ա. Օ. — 2. 1.4. և 13. — Հռով. 1.16. — Եսայ. 29.14. — Եսայ. 33.18.

գա_

ցանել զհաւատացեալս ։ 22 * Իսկ որովհետեւ Հրեայք զնշան հայցեն. եւ հեթանոսք զիմաստութիւն խնդրեն։ 23 * Մեք քարոզեսցուք զխաչելեալն Ք՟ս. Հրէից գայթագղութիւն. եւ հեթանոսաց յիմարութիւն։ 24 * Նոցին իսկ կոչեցելոցն Հրէից եւ հեթանոսաց՝ զՔ՟ս, ա՟յ զօրութիւն եւ ա՟յ իմաստութիւն։ 25 * Զի յիմարն ա՟յ իմաստնագոյն է քան զմարդիկ։ եւ տկարն ա՟յ զօրագոյն է քան զմարդիկ ։ 26 * Տեսէք եւ զձեր իսկ կոչումն տեսէք եղբարք։ զի ոչ բազումք իմաստունք ըստ մարմնոյ. եւ ոչ բազումք հզօրք. եւ ոչ բազումք ազնուականք։ 27 * Այլ զյիմարս աշխարհիս ընտրեաց Ա՟Ծ, զի յամօթ արասցէ զիմաստունս ։ եւ զտկարս աշխարհիս ընտրեաց Ա՟Ծ, զի յամօթ արասցէ զհզօրս։ 28 * Եւ զանարգս աշխարհիս եւ զարհամարհեալս ընտրեաց Ա՟Ծ եւ զոչինչսն. զի զէսն իմն խափանեսցէ ։ 29 * Որպ՟ զի մի պարծեսցի ամ՟ մարմին առաջի նո՟ր։ 30 * Զի ՚ի նմանէ դուք էք ՚ի Ք՟ս Յ՟ս։ որ եղեւ մեզ իմաստութիւն յա՟յ. ‖ արդարութիւն, եւ փրկութիւն, եւ սրբութիւն։ 31 * Զի որպ՟ գրեալ է։ ‖ որ պարծին, ՚ի Տ՟ր պարծեսցի։

‖ Երեմ. 23.5. ‖ Երեմ. 9.23. եւ 2. Կորն. 10.17.

ԳԼ: Բ.

1 Եւ ես թէպէտ եւ եկի առ ձեզ եղբարք՝ ‖ ոչ ըստ առաւելութեան ինչ բանից իմաստութեան պատմել ձեզ զվկայութիւն Ք՟ի։ 2 * Զի ոչ եթէ ՚ի միտ եդի գիտել ինչ ՚ի ձեզ՝ բայց միայն զՅ՟ս Ք՟ս՝ եւ զնոյն ՚ի խաչ ելեալ ։ 3 * ‖ Եւ ես տկարութեամբ՝ եւ երկիւղիւ՝ եւ դողութեամբ բազմաւ եղէ առ ձեզ ։ 4 * Եւ բանն իմ, եւ քարոզութիւն, ‖ ոչ պատիր բանիւք իմաստութեան՝ այլ ար դեամբք հոգւոյն եւ զօրութեամբ։ 5 * Զի հաւատք ձեր մի իցեն իմաստութեամբ մարդկան, այլ զօրութեամբ ա՟յ։ 6 * Զիմաստութիւն խօսիմք ընդ կատարելս. զիմաստութիւն, ոչ զաշխարհիս այսորիկ. եւ ոչ զիշխանաց աշխարհիս այսորիկ զխափանելեացս։ 7 * Այլ խօսիմք զա՟յ իմաստութիւնն ծածուկ խորհրդով. զոր յառաջ քան զյաւիտեանս սահմանեաց Ա՟Ծ ՚ի փառս մեր։ 8 * Զոր ոչ ոք յիշխանաց աշխարհիս այսորիկ ծանեաւ. զի եթէ էր ծանուցեալ՝ ոչ արդեօք զՏէրն փառաց ՚ի խաչ հանէին։ 9 * Այլ որպէս եւ գրեալ է. ‖ զոր ակն ոչ ետես, եւ ունկն ոչ լուաւ, եւ ՚ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Ա՟Ծ սիրելեաց իւրոց։ 10 * Այլ մեզ յայտնեաց Ա՟Ծ հոգւովն իւրով. զի հոգին զամենայն քննէ՝ եւ զխորս ա՟յ ։ 11 * Զի ո ոք ՚ի մարդկանէ գիտէ ինչ զմարդոյն, եթէ ոչ հոգի մարդոյն՝ որ ՚ի նմա. նոյնպէս եւ ոչ զա՟յն ոք գիտէ՝ եթէ ոչ հոգին ա՟յ։ 12 * Այլ մեք ոչ եթէ զհոգի աշխարհիս առաք՝ այլ զհոգին որ յա՟յ։ զի ծանիցուք զայն՝ որ յա՟յն շնորհեցաւ մեզ։ 13 * ‖ Եւ զոր խօսիմքս՝ ոչ եթէ մարդկեղէն ուսմամբ ճարտարութեան բանից. այլ վարդապետութեամբ հոգւոյն ընդ հոգեւորս զհոգեւորս համեմատեմք։ 14 * Բանզի շնչաւոր մարդ ոչ ընդունի զհոգւոյն ա՟յ՝ զի յիմարութիւն է նմա. եւ ոչ կարէ գիտել՝ եթէ հոգեպէս քննիցի։ 15 * Իսկ հոգեւորն քննէ զամենայն. եւ ինքն յումեքէ ոչ քննի։ 16 * ‖ Իսկ արդ ո՞վ գիտաց զմիտս Տ՟ն, որ եւ խրատտու լինիցի նմա. այլ մեք զմիտս Ք՟ի ունիմք։

‖ Իմաստ. 9.13. Եսայ. 40.13. Հռովմ. 11.34.

ԳԼ: Գ.

1 Եւ ես եղբարք՝ ոչ կարացի խօսել ընդ ձեզ իբրեւ ընդ հոգեւորս՝ 2 այլ իբրեւ ընդ մարմնաւորս։ * Իբրեւ տղայոց ՚ի Ք՟ս, զկաթն ջամբեցի ձեզ՝ եւ ոչ զկերակուր. զի ոչեւս կարէիք. նաեւ արդ իսկ ոչ կարէք. քանզի դեռ 3 մարմնաւորք էք։ * Որ եւ արդ են իսկ ՚ի ձեզ հեռ եւ նախանձ. ո՞չ ապաքէն մարմնաւորք էք՝ եւ ըստ մարդկան գնայք։ 4 * Յորժամ ասէ ոք ՚ի ձէնջ՝ ես Պօղոսեան եմ, եւ միւսն թէ ես Ապօղոսեան՝ ոչ մարդիկք էք. իսկ արդ՝ ո՞վ է Պօղոսն. կամ ո՞վ է Ապօղոսն։ 5 * Պաշտօնեայք որովք հաւատացէք, եւ իւրաքանչիւր որպէս եւ Տ՟ր ետ ։ 6 * Ես տնկեցի, Ապօղոս ջուր ետ. այլ 7 Ա՟Ծ աճեցոյց։ * Այսուհետեւ՝ ոչ այն ինչ ոք է՝ որ տնկեացն. եւ ոչ այն, որ զջուրն ետ. այլ որ աճեցոյցն Ա՟Ծ։ 8 * Որ տնկեացն եւ որ զջուրն ետ՝ մի են. բայց ‖ իւրաքանչիւրոք զիւր վարձս առնուցու՝ ըստ իւրում վաստակոց։ 9 * Զի ա՟յ գործակիցք եմք. ա՟յ արդ 10 դիւն էք. ա՟յ շինուած էք։ * Ըստ շնորհացն Ա՟Ծ՝ որք տուեալք են ինձ. իբրեւ իմաստուն ճարտարապետ զհիմն եդի. բայց այլ է՝ որ շինէ. այլ իւրաքանչիւրոք զգոյշ լիցի թէ որպ՟ շինիցէ։ 11 * Զի զհիմն այլ ոք ոչ կարէ դնել քան 12 զեդեալն՝ որ է Յ՟ս Ք՟ս։ * Եթէ ոք շինէ ՚ի վերայ հիմանս այսորիկ՝ ոսկի՝ արծաթ՝ ականս պատուականս. փայտ՝ 13 խոտ՝ եղէգն։ * Իւրաքանչիւրոյ գործն յայտնելոց է. զի օրն † ընտրեսցէ, զի 14 հրով յայտնելոց է ։ * Եւ զիւրաքանչիւրոյ գործն զիարդ եւ իցէ՝ հուրն փոր 15 ձեսցէ ։ * Եթէ ուրուք գործն, զոր շի-

‖ Սաղմ. 61.13. Մատթ. 16.27. Հռովմ. 2.6. Գաղատ. 6.5.

† Տե՟ն

չինեաց՝ կայցէ՝ վարձս առցէ. և եթէ ուրուք գործն այրեսցի՝ տուժեսցի. բայց ինքն կեցցէ. այլ այնպէս՝ որպէս թէ 'ի հրոյ։ 16 *Ո՞չ գիտէք՝ եթէ տաճար էք Այ՝ և հոգի Այ բնակեալ է 'ի ձեզ։ 17 *Եթէ ոք զտաճար Այ ապականէ, ապականեսցէ զնա Աձ. զի տաճար Այ սուրբ է. որ էք դուք։ 18 *Մի՛ ոք զանձն խաբեսցէ. եթէ ոք կամեսցի 'ի ձէնջ իմաստուն լինել յաշխարհիս յայսմիկ, յիմար լիցի՝ զի եղիցի իմաստուն։ 19 *Զի իմաստութիւն աշխարհիս այսորիկ յիմարութիւն է առաջի Այ. քանզի գրեալ է՝ թէ որ ըմբռնէ զիմաստունս 'ի խորագիտութեան իւրեանց։ 20 *Եւ դարձեալ՝ թէ Տր ճանաչէ զխորհուրդս իմաստնոց՝ զի են ընդունայնք։ 21 *Այսուհետև՝ մի՛ ոք պարծեսցի 'ի մարդկանէ։ 22 *Զի ամ ինչ ձեր է. եթէ պօղոս, եթէ ապօղոս, եթէ կեփաս, եթէ աշխարհ, եթէ կեանք, եթէ մահ, եթէ որ կանս, եթէ հանդերձեալքն. ամենայն ինչ ձեր է։ 23 *Դուք Քրիստոսի. Քրիստոս Այ։

Ա. Կոր. 6.19. — 2. Կոր. 6.16. — Յոբ. 5.13. — Սաղմ. 93.11.

## ԳԼ. Դ.

1 Այսպէս համարեսցին զմեզ մարդիկ, իբրև զպաշտօնեայս Քի և հազարապետս խորհրդոցն Այ։ 2 *Արդ՝ խնդիր է 'ի մէջ հազարապետաց՝ եթէ ոք հաւատարիմ գտցի։ 3 *Այլ ինձ և այս անարգանք են, եթէ 'ի ձէնջ դատեցայց՝ կամ բնաւ իսկ 'ի մարդկանէ. նաև զանձն իմ ոչ քննեմ։ 4 *Զի ոչինչ գիտեմ անձին իմոյ. այլ ոչ եթէ այսու արդարանամ, զի որ քննէն զիս՝ Տր է։ 5 *Այսուհետև, մի՛ յառաջ քան զժամանակն դատէք. մինչև եկեսցէ Տր՝ որ լուսաւոր առնիցէ զգաղտնիս խաւարին. և յայտնիցէ զխորհուրդս սրտից. և ապա իւրաքանչիւրոյ գովութիւն եղիցի յԱյ։ 6 *Զայս եղբարք առակեցի յանձն իմ, և յապօղոս, վասն ձեր. զի 'ի մէնջ ուսջիք մի՛ ինչ առաւել քան զգրեալսն իմանալ. զի մի՛ այր՝ քան զընկեր հպարտանայցէք 'ի վր ընկերին։ 7 *Իսկ արդ ո՞վ է՝ որ քննիցէ զքեզ. զինչ ունիս՝ որ ոչ է առեալ. և եթէ առեր՝ զի՞ պարծիս իբրև զչառօղ։ 8 *Արդէն իսկ յագեալ իցէք՝ և արդէն մեծացայք՝ առանց մեր թագաւորեցիք. և երանի՛ թէ թագաւորէիք՝ զի և մեք ընդ ձեզ թագաւորէաք։ 9 *Ինձ այսպէս թուի՛ ե թէ զմեզ զառաքեալս յետնորդս արար Աձ՝ իբրև զմահապարտս. զի տեսիլ եղեաք աշխարհի, և հրեշտակաց, և մարդկան։ 10 *Մեք յիմարք վասն Քի. և դուք իմաստունք 'ի Քս. մեք տկարք և դուք հզօրք. դուք փառաւորեալք՝ և մեք անարգք։ 11 *Մինչև ցայսօր ժամանակի՝ և քաղցեաք՝ և ծարաւեցաք՝ և մերկ գնացաք՝ և կափահարեցաք. և անհանգիստք եղեաք։ 12 *Եւ աշխատեցաք ձեռօք մերովք. բամբասէին զմեզ՝ օրհնէաք. հալածէին, 13 յանձն առնուաք։ *Հայհոյէին, աղաչէաք. իբրև առակ նշաւակի եղեաք ամ աշխարհի. ամենեցուն փարելի 14 լինել մինչև ցայժմ։ *Ոչ եթէ ամօթ ինչ առնելով զձեզ գրեմ զայս. այլ իբրև զորդիս սիրելիս խրատեմ։ 15 *Թէպէտ և բիւր դաստիարակս ունիցիք 'ի Քս՝ այլ ոչ եթէ բազում հարս. զի 'ի Քս Յս աւետարանաւն 16 ես ծնայ զձեզ։ *Արդ՝ աղաչեմ զձեզ նմանօղք ինձ եղիջիք՝ որպէս և ես Քի։ 17 *Վն այնորիկ առաքեցի առ ձեզ զտիմօթէոս՝ որ է իմ որդի սիրելի՝ և հաւատարիմ 'ի Տր. որ և յիշեցուսցէ ձեզ զճանապարհս իմ, որ 'ի Քս Յս. որպէս և ամենայն ուրեք՝ յամենայն եկեղե-18 ցիս ուսուցանեմ։ *Որպէս թէ չիցեմ գալոց առ ձեզ՝ ոմանք հպարտացան։ 19 *Այլ եկից հուպ ընդ հուպ՝ եթէ Տր կամեսցի. և 'ի միտ առից ոչ զբանս հպարտացելոցն, այլ զզօրութիւն։ 20 *Զի ոչ եթէ բանիւք է արքայութիւն 21 Այ, այլ զօրութբ։ *Արդ որպէս կամիք՝ գաւազանաւ եկից առ ձեզ, եթէ սիրով հոգւոյն՝ հեզութեն, և արդարութեն, և խոնարհութեն։

2. Կոր. 6.4. — Գործ. 20.34. — 1. Թես. 2.9. — 2. Թես. 3.8.

## ԳԼ. Ե.

1 Բնաւ և անառակութիւն լսի 'ի ձեզ ընդ-էր պոռնկութիւն՝ և այնպիսի պոռնկութիւն որ ոչ և 'ի հեթանոսս՝ որպէս թէ զկին հօր իւրոյ ոք ունել։ 2 *Եւ դուք հպարտացեալ էք. և ոչ առաւել սգացարուք. զի բարձցի 'ի միջոյ ձերմէ՝ որ զգործն զայն գոր-3 ծեաց։ *Զի ես թէպէտ մարմնով մեկուսի եմ, սակայն հոգւով մերձ եմ։ բայց արդէն իսկ իբրև 'ի մօտոյ ընտրեցի, զայն՝ որ այնպէսն գործեաց։ 4 *Յանուն Տն մերոյ Յի Քի, ժողովիլ ձեզ 'ի միասին՝ և իմով հոգւովս՝ զօրութբ հանդերձ Տն մերոյ Յի Քի։ 5 *Մատնել զայնպիսին սատանայի 'ի սատակումն մարմնոյ. զի ոգին ապրեսցի յաւուրն Տն մերոյ Յի Քի։ 6 *Ոչ բարւոք են պարծանքդ ձեր։ Ո՞չ գիտէք՝ եթէ փոքր մի խմոր զամ զանգուածն 7 խմորէ։ *Արբեցէք 'ի բաց զհին խմորն՝ զի եղիջիք նոր զանգուած, որպէս էքդ անխմորք. քանզի զատիկ մեր

Ղևտ. 18.7. և 20.11. — ոգւոյ — Կող. 2.5. — Գաղ. 5.9.

մեր զենաւ Քս։ 8 *Առ յուսհետև արասցուք տօնս․ մի՛ 'ի խմորն հին․ և մի՛ 'ի խմորն չարութե և անզգամութեան․ այլ յանխմորն ստուգութե և ճշմարտութե։

Բ․Գ․

9 *Գրեցի ձեզ 'ի թղթի այդր չխառնակիլ ընդ պոռնիկս։ 10 *Եւ ոչ եթէ ընդ պոռնիկս աշխարհիս այսորիկ՝ կամ ը ագահս՝ և ընդ յափշտակօղս՝ կամ ը կռապաշտս։ ապա թէ ոչ՝ պարտ էիք և յաշխարհէ իսկ ելանել։ 11 *Բայց արդ գրեցի ձեզ չխառնակիլ․ եթէ ոք եղբայր անուանեալ, կամ պոռնիկ իցէ, կամ կռապաշտ՝ կամ ագահ՝ կամ բամբասօղ՝ կամ արբեցօղ՝ կամ յափշտակօղ՝ ը այնպիսում և ընդ հաց մի՛ ուտել։ 12 *Զի՞ կայ իմ և զարտաքինսն դատելոյ։ ո՞չ ապաքէն դուք զներքինսն դատիցէք։ 13 *Եւ զարտաքինսն Այ դատեսցէ։ բարձէք զչարն 'ի միջոյ ձերմէ։

## Գլ․ Զ․

1 Իշխէ ոք 'ի ձէնջ եթէ իրք ինչ իցեն ընդ ընկերի իւրում, դատիլ առաջի անիրաւաց՝ և ոչ առաջի սրբոց։ 2 *Եթէ ո՞չ գիտէք՝ զի սբք զաշխարհ դատեն։ և եթէ ձեօք դատի աշխարհ՝ ապա ո՞չ էք արժանի անարգ ատենից։ 3 *Ո՞չ գիտէք՝ եթէ զհրեշտակս դատեմք (թող թէ զերկրաւորս։ 4 *Զերկրաւոր ատեանս եթէ յանձն առնուցուք, զանարգսն եկեղեցւոյ դատաւորս նստուցէք։ 5 *Առ ամօթոյ ձերոյ ասեմ․ այնչափ ոչ գոյ ոք իմաստուն 'ի ձեզ․ որ կարիցէ իրաւունս ընտրել 'ի մէջ եղբօր իւրոյ։ 6 *Այլ եղբայր ը եղբօր դատի․ և զայն 'ի մէջ անհաւատից։ 7 *Եւ արդ՝ ամենևին իսկ վնաս թարութիւն է 'ի ձեզ․ զի դատաստանք իսկ գոն 'ի միջի ձերում։ ընդէ՞ր ոչ դուք զրկիք։ և ոչ դուք առաւել նեղիք։ 8 *Այլ դուք զրկէք՝ և նեղէք․ և այդ զեղբարս ևս։ 9 *Եթէ ո՞չ գիտէք՝ զի անիրաւք զարքայութիւն Այ ոչ ժառանգեն․ մի՛ խաբիք՝ ո՛չ պոռնիկք, ո՛չ կռապաշտք, ո՛չ շունք։ 10 *Ո՛չ իգացեալք, ո՛չ արուագէտք, ո՛չ գողք, ո՛չ ագահք, ո՛չ արբեցօղք, ո՛չ բամբասօղք, և ո՛չ յափշտակօղք զարքայութի Այ ժառանգեն։ 11 *Եւ դուք այնպիսիք ոմանք էիք։ այլ լուացարուք՝ այլ սրբեցարուք՝ այլ արդարացարուք յանուն Տն մերոյ Յի Քի, և 'ի հոգին Այ մերոյ։ 12 *Ամենայն ինչ ինձ մարթ է՝ այլ ո՛չ ամ ինչ օգուտ է։ ամ ինչ ինձ մարթ է, այլ ո՛չ եթէ ես ընդ իշխանութբ ուրուք լինիցիմ։ 13 *Կերակուր որովայնի, և որովայն կերակրոյ։ այլ Այ զսա՝ և զնոսա խափանեսցէ, բայց մարմին ո՛չ պոռնկութե, այլ Տն՝ և Տր մարմնոյ։ 14 *Այլ Այ որ և զՏրն յարոյց․ և զձեզ յարուսցէ զօրութբ իւրով։ 15 *Ո՞չ գիտէք՝ եթէ մարմինք ձեր անդամք են Քի։ արդ առեալ զանդամս Քի, առնիցեմք անդամս պոռնկի՞։ 16 *Եթէ ո՞չ գիտէք՝ զի որ մերձենայ 'ի պոռնիկ՝ մի մարմին է, եղիցին (ասէ) երկոքին 'ի մարմին մի։ 17 *Եւ որ մերձենայ 'ի Տր՝ մի հոգի է։ 18 *Փախերո՛ւք 'ի պոռնկութե․ զամ մեղս՝ զոր և գործէ մարդ՝ արտաքոյ մարմնոյ իւրոյ է։ իսկ որ պոռնկի՝ յիւր մարմին մեղանչէ։ 19 *Եթէ ո՞չ գիտէք՝ զի մարմինք ձեր տաճար են հոգւոյն սրբոյ՝ որ է 'ի ձեզ՝ զոր ունիք յԱյ։ և չէք անձանց տէր։ 20 *Վասնզի գնոց գնեցայք։ փառաւոր արարէք զԱյ 'ի մարմինս ձեր, և յոգիս․ որ է յԱյ։

## Գլ․ Է․

1 Այլ վասն որոյ գրեցէքն առ իս, բարւոք է մարդոյ՝ 'ի կին մարդ չմերձենալ։ 2 *Բայց վասն պոռնկութե իւրաքանչիւրոք զիւր կին կալցի․ և իւրաքանչիւրոք կին զիւր այր կալցի։ 3 *Կնոջ այր իւր զպարտսն հատուսցէ։ 4 նոյնպէս և կին առն իւրում։ *Զի կին մարմնոյ իւրում ո՛չ իշխէ այլ այրն․ նոյնպէս և այր՝ իւրում մարմնոյն ո՛չ իշխէ՝ այլ կինն։ 5 *Մի՛ զրկէք զմիմեանս։ բայց եթէ ինչ 'ի միաբանութե առ ժամանակ մի, զի ուխտիցն պարապիցէք։ և դարձեալ 'ի նոյնս դարձջիք։ զի մի՛ փորձեսցէ զձեզ սատանայ 6 վասն անխառնութե ձերոյ։ *Զայս ասեմ ներելով՝ և ո՛չ հրամանաւ։ 7 *Վասնզի կամիմ եթէ ամ մարդ լինիւր իբրև զիս։ այլ իւրաքանչիւրոք զիւր շնորհս ունի յԱյ՝ ոմն այսպէս՝ և ոմն այնպէս։

8 *Բայց ամուրեացն և այրեացն ասեմ, լաւ է նոցա՝ եթէ կայցեն իբրև զիս։ 9 *Ապա թէ ոչ ունիցին ժոյժ՝ ամուսնասցին։ զի լաւ է ամուսնանալ՝ քան 10 զջեռնուլ։ *Այլ կանամբեացն պատուիրեմ, ո՛չ ես, այլ Տր։ կնոջ յառնէ 11 մի՛ մեկնիլ։ *Ապա եթէ մեկնեսցի, անայր մնասցէ՝ կամ անդրէն ընդ առն իւրում հաշտեսցի։ և առն զկին իւր 12 մի՛ թողուլ։ *Բայց այլոց ես պատուիրեմ, ո՛չ եթէ Տր․ եթէ ոք եղբայր, կին ունիցի անհաւատ, և նմա հաճոյ իցէ բնակել ընդ նմա՝ մի՛ թողցէ զնա։ 13 *Եւ կին, որ ունիցի զայր անհաւատ՝ և նմա կամ իցէ բնակել ընդ նմա՝ մի՛ թողցէ

թողցէ զայրն։ 14 * Զի սրբ՟է այրն անհաւատ կնաւն։ և սրբ՟է կինն անհաւատ արամբն։ ապա թէ ոչ՝ որդիքն ձեր պիղծք էին։ բայց այժմ սրբ՟ք են։ 15 * Ապա թէ անհաւատն մեկնեսցի, մեկնեսցի։ զի ոչինչ հարկ 'ի վերայ կայ եղբօրն, կամ քեռն յայնպիսի իրս։ քանզի 'ի խաղաղութիւն կոչեաց զմեզ Ա՟ծ։ 16 * Զի՞ գիտես կին դու՝ եթէ զայր քո ապրեցուսցես։ կամ զի՞ գիտես այր դու՝ եթէ զկին քո ապրեցուսցես։ 17 * Եթէ ոչ՝ իւրաքանչիւր ումեք որպէս և բաժանեաց Տ՟ր, զիւրաքանչիւր ոք որպէս և կոչեաց Ա՟ծ՝ այնպէս գնասցէ։ և այսպէս ընդ ա՟մ եկեղեցիս պատուէր տամ։ 18 * Թլփատեալ ոք կոչեցաւ՝ մի՛ յանկասցի անթլփատութեան։ յանթլփատութեան ոք կոչեցաւ՝ մի՛ թլփատեսցի։ 19 * Զի թլփատութիւն ոչինչ է՝ և անթլփատութիւն ոչինչ։ այլ պահպանութիւն ա՟յ պատուիրանացն։

‖ Եփես. 4. 1.

20 * ‖ Բայց իւրաքանչիւրոք յոր կոչումն կոչեցաւ՝ 'ի նմին կացցէ։ 21 * Ծառայ կոչեցար՝ մի՛ փոյթ լիցի քեզ։ այլ թէ և կարիցես ազատ լինել՝ քեզ այնպէս լաւ իցէ։ 22 * Զի որ 'ի Տ՟ր կոչեցեալ է ծառայն՝ ազատ Տ՟ն է. նոյնպէս և որ ազատն կոչեցեալ է՝ ծառայ Ք՟ի է։

‖ Վեր. 6. 20. 1. Պետ. 1. 18.

23 * ‖ Գնոց գնեցայք՝ մի՛ լինիք ծառայք մարդկան։ 24 * Իւրաքանչիւրոք յոր կոչումն կոչեցաւ՝ 'ի նմին կացցէ առաջի Ա՟յ։

Գ Գ

25 * Այլ վ՟ս կուսանաց պատուէր ինչ 'ի Տ՟է ոչ ունիմ. բայց խրատ տամ, որպէս ողորմեալ ուրուք 'ի Տ՟է, հաւատարիմ լինել։ 26 * Համարիմ թէ այնպէս լաւ իցէ, (բայց) վ՟ս վտանգին որ 'ի վ՟ր կայ, բարւոք է մարդոյ թէ այսպէս իցէ։ 27 * Կապեալ ես 'ի կին՝ մի՛ խնդրեր արձակել։ արձակեալ ես 'ի կնոջէ՝ մի՛ խնդրեր զկին։ 28 * Զի եթէ ամուսնանայցես՝ ոչ մեղար։ և եթէ ամուսնանայցէ կոյսն, ոչ մեղաւ։ բայց զնեղութիւն մարմնոյ ունիցին այնպիսիքն։ այլ ես խնայեցի 'ի ձեզ։ 29 * Բայց զայս ասեմ եղբարք՝ եթէ ժամանակս կարճեալ է։ այսուհետև զի որք ունիցին կանայս՝ որպէս թէ չունիցին։ 30 * Եւ որք լայցեն՝ որպէս թէ ոչ լայցեն։ և որք խնդան՝ որպէս թէ չխնդայցեն։ և որք գնեն՝ որպէս թէ չունիցին։ 31 * Եւ որք վարեն զաշխարհս՝ որպէս թէ չվայելիցեն. զի անցեալ է վայելչութիւն աշխարհիս այսորիկ։ 32 * Այլ կամիմ զձեզ անհոգս լինել։ զի որ անկինն է՝ հոգայ զՏ՟ն, թէ որպէս հաճոյ լիցի Տ՟ն։ 33 * Եւ որ կանամբին է՝ հոգայ զաշխարհս, թէ որպէս հաճոյ լիցի կնոջ իւրում։ և ահա մեկնեցան 'ի միմեանց։ 34 * Առնակինն և կոյսն զի կոյսն հոգայ զՏ՟ն զի իցէ սուրբ հոգւով և մարմնով։ և առնակինն հոգայ զաշխարհս, թէ որպէս հաճոյ լիցի առն իւրում։ 35 * Այլ զայս վ՟ս ձերոյ օգտի ասեմ. ոչ եթէ խեղդ ինչ արկանեմ ձեզ։ այլ վ՟ս պարկեշտութեան՝ և հպատակութեան Տ՟ն առանց զբաղանաց։

36 * Ապա թէ ոք ամօթ համարիցի վ՟ս կուսին իւրոյ՝ եթէ իցէ ելեալ ժ՟մ հասի. և այնպէս ինչ պարտ իցէ լինել. զոր կամեսցի՝ արասցէ. ոչ մեղանչէ, ամուսնասցի։ 37 * Իսկ որ հաստատեալ է 'ի սրտի իւրում, և վտանգ ինչ ոչ իցէ նմա, զիշխանութիւն ունի 'ի վերայ կամաց իւրոց. և զայն ընտրեաց 'ի սրտի իւրում, պահել զկոյսն իւր՝ բարւոք առնէ։ 38 * Եւ որ ամուսնացուցանէ զկոյսն իւր՝ բարւոք առնէ. և որ ոչ ամուսնացուցանէ՝ լաւ ևս առնէ։ 39 * ‖ Կին կապեալ է՝ ցորքան ժամանակս կենդանի է այր նր՟ա. ապա եթէ ննջիցէ այր նր՟ա՝ ազատ է. ում կամիցի ամուսնասցի. բայց միայն Տ՟ն։ 40 * Բայց երանելի ևս է՝ թէ այնպէս կացցէ ըստ իմում խրատու։ ես այսպէս համարիմ, թէ և յիս իցէ հոգի Ա՟յ։

‖ Հռոմ. 7. 2.

## ԳԼ։ Ը։

ԳԻ

1 Այլ վասն զոհից կռոցն գիտեմք՝ եթէ ամենեքեան զգիտութիւն ունիմք։ գիտութիւն հպարտացուցանէ. այլ սէր շինէ։ 2 * Եթէ ոք կամիցի գիտել ինչ, չև ևս գիտաց՝ որպէս արժանն էր գիտել։ 3 * Բայց որ սիրէ զԱ՟ծ, նա է տեղեկացեալ 'ի նմանէ։ 4 * Այլ վ՟ս կերակրոյն զոհելոյ՝ գիտեմք եթէ ոչ ինչ իսկ կուռքդ են յաշխարհի։ զի չիք ոք Ա՟ծ բաց 'ի միոյն։ 5 * Զի թէպէտ և իցեն անուանեալ Ա՟ծք՝ եթէ յերկինս, և եթէ յերկրի։ ( որպէս և են ա՟ծք բազումք՝ և տեարք բազումք։)

Եթէ ոք համարեսցի գիտել

6 * Այլ մեզ մի է Ա՟ծ հայր՝ յորմէ ա՟մ, և մեք 'ի նա։ և մի Տ՟ր Յ՟ս Ք՟ս, որով ա՟մ, և մեք նովաւ։ 7 * Այլ ոչ յամենեսեան գիտութիւն է։ ոմանք առ խղճի մտաց մինչև ցայժմ զկռոցն իբրև զզոհեալ ուտեն։ և խիղճ մտաց նց՟ա քանզի տկար է, պղծի։ 8 * Այլ կերակուր զմեզ առաջի Ա՟յ ոչ կացուցանէ։ ոչ եթէ չուտեմք՝ պակասիմք ինչ. և ոչ եթէ ուտեմք, առաւելումք ինչ։

9 * Բայց զգոյշ լերուք՝ գուցէ իշխանութիւնդ ձեր այդ, գայթագղութիւն լինիցի տկարաց։ 10 * Եթէ ոք տեսանիցէ զքեզ՝ որ զգիտութիւնդ ունիս՝ բազմեալ 'ի մեհենի՝ ոչ ապաքէն խիղճ մտաց նորա, որ տկարութիւն զգածեալ է՝

անդրէն չինիցի ուտել զզոհեալն ։ * Եւ կորնչիցի տկար եղբայրն 'ի քում գիտութեան. վն̄ որոյ Քս̄ն մեռաւ ։ 11

*Եւ այնպէս յանցուցեալ յեղբարս, և զխիղճ մտաց տկարացն զայրացուցեալ՝ 'ի Քս̄ մեղանչէ ։ 12

* Վս̄ որոյ՝ թէ կերակուր գայթագղեցուցանէ զեղբայրն իմ, ոչ կերից զմիս յաւիտեան ։ զի մի՛ զեղբայրն իմ գայթագղեցուցից ։ 13

(Հռոմ. 14. 15. և 20. — Հռոմ. 14. 21.)

## Գլ: Թ.

Ո՞չ ապաքէն ազատ եմ, ո՞չ ապաքէն առաքեալ եմ, ո՞չ ապաքէն զՏր̄ մեր Յս̄ Քս̄ աչօք իմովք տեսի ։ ո՞չ ապաքէն գործ իմ դուք էք 'ի Տր̄ ։ 1

* Թէպէտ և այլոց չիցեմ առաքեալ՝ այլ գէպ ձեզ եմ ։ զի կնիք իսկ առաքելութեան իմոյ դուք էք 'ի Տր̄ ։ 2

* Իմ պատասխանի՝ որ զիս հարցանիցեն՝ այս է ։ 3

* Միթէ ո՞չ ունիցիմք իշխանութիւն ուտել և ըմպել ։ 4

* Միթէ ո՞չ ունիցիմք իշխանութիւն զքոյր կանայս շրջեցուցանել ընդ մեզ. ո՞րպէս և այլ առաքեալքն. և եղբայրն Տն̄ և կեփաս ։ 5

* Եթէ միայն ես և բառնաբաս չունիցիմք զիշխանութիւն գործել ինչ ։ 6

* Ո՞վ զինուորիցի իւրովք թոշակօք ։ ո՞վ տնկիցէ զայգի՝ և 'ի պտղոյ նո̄ ոչ ուտիցէ ։ ո՞վ արածիցէ զխաշն՝ և 'ի կաթանէ խաշինն ոչ ուտիցէ ։ 7

* Միթէ ըստ մարդկութեա՞ն խօսիցիմ զայս ։ կամ թէ և օրէնքն զսոյն ո՞չ ասիցեն ։ 8

* 'Ի մօսիսի իսկ յօրէնսն գրեալ է ։ ոչ կապեսցես զցռուկ եզին կալոտւոյ ։ միթէ զեզանց ինչ փոյթ էր այ̄ ։ 9

* Ո՞չ ապաքէն վն̄ մեր ասէ ։ քանզի վն̄ մեր գրեցաւ ։ զի յուսով պարտի, որ սերմանէն, սերմանել ։ և որ կասուն՝ յուսով վայելել ։ 10

* Եթէ մեք 'ի ձեզ զհոգևորսն սերմանեցաք՝ մեծ ի՞նչ է, եթէ 'ի ձէնջ զմարմնաւորսդ հնձիցեմք ։ 11

* Եթէ այլք ձերով իշխանութբ̄դ վայելեն, ընդէ՞ր ոչ առաւել ևս մեք ։ այլ ո՛չ 'ի գործ ինչ արկաք զիշխանութիւս զայս ։ բայց ա̄մի համբերեմք. զի մի՛ խափանիչք լինիցիմք աւետարանին Քս̄ի ։ 12

* Ո՞չ գիտէք՝ եթէ որք 'ի տաճարին գործեն, 'ի տաճարէ անտի ուտեն ։ և որք սեղանոյն պաշտօնեայքն են, 'ի սեղանոյ անտի վայելեն ։ 13

* Այնպէս և Տր̄ հրաման ետ. որոց զաւետարանն աւետարանեն՝ յաւետարանէ անտի կեալ ։ 14

* Բայց ես և ո՛չ զմի ինչ յայսցանէ արկի 'ի գործ. և ո՛չ գրեցի զայդ՝ զի ինձ այնպէս ինչ լինիցի ։ լաւ է ինձ մեռանել. և ո՛չ զի զպարծանս իմ ոք ընդունայն համարիցի ։ 15-16

(Մարգ. — Հռոմ. 14. 21. — Բ. Օրէ. 25. 4. — Ա. Տիմ. 5. 18. — Հռոմ. 15. 27. — Բ. Օրէ. 18. 1.)

* Զի եթէ աւետարանեմ, ոչինչ են ինձ պարծանք. քանզի հարկ 'ի վր̄ կայ ։ բայց վա՜յ է ինձ, եթէ ոչ աւետարանեմ ։ 16

* Եթէ կամաւ զայն առնեմ, վարձք են ինձ ։ և եթէ ակամայ՝ տնտեսութիւն յանձն է ինձ ։ 17

* Եւ արդ՝ զի՞նչ վարձք են ինձ ։ եթէ յաւետարանելն ձրի տաց զաւետարանն՝ զի մի՛ զեղծիցիմ ինչ իշխանութբ̄ս իմով յաւետարանի անդ ։ 18

* Քանզի ազատ էի յա̄մէ՝ և ամենեցուն զանձն 'ի ծառայութիւն կացուցի. զի զբազումս շահեցայց ։ 19

* Եղէ ընդ հրէայսն իբրև զհրէայ. զի զհրէայսն շահեցայց ։ 20

* Եղէ ընդ օրինօք իբրև զայնոսիկ՝ որք ընդ օրինօքն էին ։ (իբր ո՛չ եթէ ընդ օրինօքն էի ։) այլ զի և որք ընդ օրինօքն իցեն, և զնոսա շահեցայց ։ ընդ անօրէնսն եղէ իբրև զանօրէն ։ (իբր ո՛չ եթէ անօրէն ինչ էի Այ̄. այլ ընդ օրինօքն Քս̄ի ։) զի շահեցայց զանօրէնսն ։ 21

* Եղէ ընդ տկարս իբրև զտկար՝ զի զտկարսն շահեցայց ։ ընդ ա̄մի ամենայն եղէ. զի թերևս ապրեցուցից զոմանս ։ 22

* Զայս ա̄մ առնեմ վասն աւետարանին, զի կցորդ եղէց նմա ։ 23

* Ո՞չ գիտէք՝ եթէ որք յասպարիսին ընթանան, ընթանալ ամենեքեան ընթանան՝ բայց մի ոք առնու զյաղթութիւն ։ այնպէս ընթացարո՛ւք՝ զի հասանիցէք ։ 24

* Ամենայն որ պատերազմի՝ ա̄մի ժուժկալ լինի ։ նոքա զի զեղծանելի պսակն առնուցուն՝ և մեք զանեղծութն ։ 25

* Արդ ես իսկ այնպէս ընթանամ, ո՛չ ո՛րպէս յաներևոյթս. այնպէս մրցիմ, ո՛չ ո՛րպէս թէ զհողմս ինչ կոծելով ։ 26

* Այլ ճնշեմ զմարմինս իմ, և հնազանդեցուցանեմ ։ զի գուցէ որ այլոյն քարոզեցի՝ ես ինքն անպիտան գտանիցիմ ։ 27

## Գլ: Ժ.

Ո՛չ կամիմ, եթէ տգէտ իցէք եղբարք ։ զի հարքն մեր ամենեքին ընդ ամպովն էին ։ և ամենեքին ընդ ծովն անցին ։ 1

* Եւ ամենեքին 'ի մօսէս մկրտեցան յամպն և 'ի ծովն ։ 2

* Եւ ամենեքին զնոյն հոգևոր կերակուրն կերին ։ 3

* Եւ ամենեքին զնոյն հոգևոր ըմպելին արբին ։ (զի ըմպէին 'ի հոգևոր վիմէն՝ որ երթայր զհետ նո̄ց ։ և վէմն էր ինքն Քս̄ ։) 4

* Այլ ո՛չ եթէ ընդ բազումս 'ի նոցանէ հաճեցաւ ա̄ծ ։ քանզի տապաստ անկան յանապատի անդ ։ 5

* Եւ այն օրինակաւ լինէր վն̄ մեր ։ զի մի՛ լիցուք ցանկացօղք չարեաց. որպէս և նոքայն ցանկացան ։ 6

* Եւ

(Ել. 13. 21. — Թուոց 9. 21. — Ել. 14. 22. — Ել. 16. 15. — Ել. 17. 6. — Թուոց 20. 10. — Թուոց 26. 64. և 65. — Սաղմ. 105. 14.)

7 *Եւ մի՛ կռապաշտք լինիք՝ որպէս ոմանք 'ի նոցանէ ։ որպէս և գրեալ է ։ ‖Նստաւ ժողովուրդն ուտել և ըմպել՝ և յարեան 'ի խաղալ ։ 8 *Եւ մի՛ պոռնկիցուք, ‖որպէս ոմանք 'ի նոցանէ պոռնկեցան ։ և անկան 'ի միում աւուր քսան և չորք հազարք ։ 9 *Եւ մի՛ փորձեսցուք զՏ՟ր ‖որպէս ոմանք 'ի նոցանէ փորձեցին, և յօձից անտի սատակեցան ։ 10 *‖Եւ մի՛ տրտնջեսցուք՝ որպէս ոմանք 'ի նոցանէ տրտնջեցին, և կորեան 'ի սատակչէ անտի ։ 11 *Այլ այն ա՟մ օրինակաւ անցանէր ընդ նոսա ։ բայց գրեցաւ վասն մերոյ խրատու. յորս վախճանք յաւիտեանցն եհաս ։ 12 *Այսուհետև որ համարիցի հաստատուն կալ՝ զգոյշ լիցի. գուցէ անկանիցի ։ 13 *Փորձութիւն 'ի ձեր վ՟ր ոչ է եկեալ բայց 'ի մարդկանէ ։ այլ հաւատարիմ է Ա՟Ծ՝ որ ոչ արկցէ զձեզ 'ի փորձութիւն առաւել քան զկար ձեր ։ այլ արասցէ ընդ փորձութեանն և զելս՝ զի համբերել կարասջիք ։

‖Ելից. 32. 6. ‖Թուոց 25. 1. զՔ՟ս ‖Թուոց 21. 5. 6. ‖Թուոց 11. 1. և 14. 2.

Գ. Գ.

14 *Վ՟ն որոյ սիրելիք իմ, փախերո՛ւք 'ի կռապաշտութենէ ։ 15 *Իբրև ընդ իմաստունս խօսիմ ։ ընտրեցէ՛ք ձեզէն՝ զոր ասեմս ։ 16 *Բաժակն օրհնութեան՝ զոր օրհնեմք՝ ո՞չ ապաքէն հաղորդութիւն է արեանն Ք՟Ի ։ հացն՝ զոր բեկանեմք՝ ո՞չ ապաքէն հաղորդութիւն է մարմնոյն Ք՟Ի ։ 17 *Զի մի հաց՝ մի մարմին եմք բազումքս ։ զի ամենեքին 'ի միոջէ հացէ անտի վայելեմք ։ 18 *Տեսէ՛ք զԻսրայէլ ըստ մարմնոյ ։ ո՞չ ապաքէն՝ որք ուտեն 'ի զոհիցն՝ հաղորդք են սեղանոյն ։ 19 *Իսկ արդ զի՞նչ. ասեմ, թէ զոհեալն իցէ ինչ ։ և կամ թէ կուռքն իսկ իցեն ինչ ։ 20 *Այլ զոր զոհենն հեթանոսք՝ դիւաց, և ոչ Ա՟Յ զոհեն ։ ոչ կամիմ զձեզ հաղորդս դիւաց լինել ։ քանզի ոչ կարէք զբաժակն Տ՟Ն ըմպել՝ և զբաժակն դիւաց ։ 21 *Եւ ո՛չ կարէք 'ի սեղանոյ Տեառն վայելել՝ և 'ի սեղանոյ դիւաց ։ 22 *Եթէ զնախանձ ինչ արկանիցեմք Տ՟Ն. միթէ զօրաւորագո՞յնք իցեմք քան զնա ։ ‖Ա՟մ ինչ ինձ մարթ է՝ այլ ոչ ա՟մ ինչ օգուտ է ։ 23 *Ամենայն ինչ ինձ մարթ է՝ այլ ոչ ա՟մ ինչ շինէ ։ 24 *Մի՛ ոք զանձին և եթ խնդրեսցէ՝ այլ և զընկերին ։ 25 *Ամենայն ինչ որ 'ի սպանդանոցի վաճառի, կերա՛յք, և մի՛ խտրէք վ՟ս խղճի մտաց ։ 26 *‖Զի Տ՟Ն է երկիր լրիւ իւրով ։ 27 *Եթէ ոք կոչէ զձեզ յանհաւատից՝ և կամիցիք երթալ ։ ա՟մ ինչ՝ որ առաջի ձեր դնիցի, կերա՛յք, և մի՛ խտրէք վ՟ս խղճի մտաց ։ 28 *Ապա եթէ ոք ասասցէ ձեզ՝ թէ այդ զոհեալ է՝ մի՛ ուտիցէք վ՟ս ն՟ր որ ցուցանն եղև. և վասն խղճի մտացն ։

‖Վեր. 6. 12. ‖Սաղմ. 23. 1. Մերուս. 17. 31.

29 *Այլ զխիղճ մտացն ասեմ. ոչ զիւրն, այլ զընկերին ։ իսկ ընդէ՞ր բնաւ ազատութիւնս իմ դատիցի յայլոց խղճէ մտաց ։ 30 *Եթէ ես շնորհօք վայելեմ, ընդէ՞ր հայհոյիցիմ, վ՟ս որոյ ես գոհանամ ։ 31 *‖Արդ՝ եթէ ուտիցէք՝ եթէ ըմպիցէք՝ եթէ զինչ և առնիցէք ։ զա՟մ ինչ 'ի փառս Ա՟Յ արասջի՛ք ։ 32 *Առանց գայթագղութեան դնելոյ հրէից և հեթանոսաց լինիջի՛ք՝ և եկեղեցւոյն Ա՟Յ ։ 33 *Որպէս և ես ամենևին ամենեցուն հաճոյ լինիմ ։ ոչ խնդրեմ զանձին օգուտ ։ այլ զբազմաց՝ զի ապրեսցին ։

‖Կողո. 3. 17.

## Գլ. ԺԱ.

Գ. Օ.

1 Նմանօղք ինձ եղերո՛ւք. որպէս և ես Ք՟Ի ։ 2 *Գովեմ զձեզ՝ զի զա՟մ ինչ զիմ յիշէք ։ և որպէս աւանդեցի ձեզ՝ զաւանդութիւնսն ունիջիք ։ 3 *‖Կամիմ, զի գիտիցէք դուք. եթէ առն ա՟մ գլուխ Ք՟Ս է՝ և գլուխ կնոջ այր՝ և գլուխ Ք՟Ի Ա՟Ծ ։ 4 *Ամենայն այր՝ յոր ժամ յաղօթս կայցէ՝ կամ մարգարէանայցէ՝ և զգլուխն ծածկեալ ունիցի, 5 յամօթ առնէ զգլուխն իւր ։ *Եւ ա՟մ կին՝ յորժամ յաղօթս կայցէ՝ կամ մարգարէանայցէ բացաւ գլխով՝ յամօթ առնէ զգլուխն իւր ։ զի այնպէս համարի՝ 6 թէ գերծեալ իցէ ։ *Զի եթէ ոչ սքօղեսցի կին, փոքրեսցէ զհերս իւր ։ ապա եթէ անպատեհ է կնոջ փոքրել 7 կամ գերծուլ՝ սքօղեսցի ։ *Առն մարդոյ չէ՛ պարտ ծածկել զգլուխ իւր ։ զի պատկեր և փառք Ա՟Յ է ։ իսկ կին 8 փառք առն իւրոյ է ։ *‖Զի ոչ եթէ այր 'ի կնոջէ է. այլ կին յառնէ ։ 9 *Քանզի ոչ իսկ հաստատեցաւ այր վասն կնոջ. այլ կին վասն առն ։ 10 *Վ՟ն այնորիկ պարտի կինն շուք դնել 11 գլխոյն վ՟ս հրեշտակաց ։ *Բայց ոչ կին առանց առն. և ոչ այր առանց կնոջ 12 'ի Տ՟Ր ։ *Զի որպէս կին յառնէ՝ նոյնպէս 13 և այր 'ի կնոջէ՝ բայց ա՟մ յԱ՟Յ ։ *Այլ դուք ձեզէն տո՛ւք զիրաւ ։ արժա՞ն է կնոջ մարդոյ հոլանի յաղօթս կալ ա-14 ռաջի Ա՟Յ ։ *Եւ ո՛չ բնութիւն իսկ ուսուցանէ զձեզ ։ զի այր եթէ գիսաւոր 15 է՝ անարգանք են նմա ։ *Բայց կին եթէ գիսաւոր է՝ փառք են նմա ։ զի գէսք փոխանակ զգեստու տուեալ 16 են նմա ։ *Ապա թէ ոք կամի հակառակօղ լինել. մեք չունիմք այնպիսի սովորութիւն. և ոչ եկեղեցիքն Ա՟Յ ։ 17 *Այլ զայս պատուիրեմ, ոչ որպէս թէ գովիցեմ, զի ոչ 'ի լաւ անդր՝ այլ 'ի 18 վատթարն նկրտիք ։ *Նախ՝ յորժամ 'ի մի վայր ժողովիցիք յեկեղեցին,

‖Եփես. 5. 23. ‖Ծննդ. 2. 23.

լսեմ եթէ հերձուածք գոն 'ի ձեզ: և սակաւ ինչ հաւատացի ։ 19 * Բայց և հերձուածք լինելոց են 'ի ձեզ: զի որք ընտիրքն իցեն 'ի ձեզ՝ երևեսցին:
20 * Եւ արդ՝ 'ի ժողովելն ձեզ 'ի միասին՝ ոչ է տուն Տն ձեզ տեղի հաց ուտելոյ:
21 * Զի իւրաքանչիւր ոք՝ զիւր ընթրիս յառաջանայ ուտել ։ և ոմն քաղցեալ՝ և ոմն արբեալ ։ 22 * Միթէ տունս ոչ ունիցիք ուտելոյ կամ ըմպելոյ: եթէ զեկեղեցեաւն Այ արհամարհիցէք. և յամօթ առնէք զչքաւորսն: զինչ ասա ցից: գովեցի՞ց զձեզ՝ յայդմ ոչ գովեմ:
23 * Զի ես ընկալայ 'ի Տէ՝ զոր և ձեզն աւանդեցի: եթէ Տր Յս 'ի գիշերին յորում մատնիւր, էառ զհաց՝ 24 * գո_ հացաւ՝ եբեկ՝ և ասէ: ‖ Առէք՝ և կե րայք. այս է մարմին իմ, որ վասն ձեր բաշխի: զայս արարէք առ իմոյ յիշա_ տակի ։ 25 * Նոյնպէս և զբաժակն յետ ընթրեացն էառ և ասէ: այս բաժակ՝ նոր ուխտ է իմով արեամբ. զայս ա_ րարէք քանիցս անգամ եթէ ըմպիցէք՝ առ իմոյ յիշատակի ։ 26 * Քանզի քանիցս ան_ գամ եթէ ուտիցէք զհացս զայս, և զբաժակս ըմպիցէք՝ զմահ Տն պատմե ցէք, մինչև եկեսցէ նա ։ 27 * ‖ Ապա_ հետև՝ որ ուտիցէ զհացս, կամ ըմպի_ ցէ զբաժակս Տն անարժանութ, պար տական եղիցի մարմնոյ և արեան Տն:
28 * Փորձեսցէ մարդ զանձն իւր. և ապա 'ի հացէ անտի կերիցէ. և 'ի բաժա_ կէն արբցէ ։ 29 * Զի որ ուտէ և ըմպէ անարժանութբ՝ դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ ։ զի ոչ խտրէ զմարմինն Տն: 30 * Վա այնորիկ իսկ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտա_ ժետք. և շատք ևս այնք են, որք և ննջեցեալք իսկ իցեն ։ 31 * Զի եթէ զանձինս քննէաք՝ ապա ոչ դատապար տեաք ։ 32 * Եւ եթէ դատիմք՝ 'ի Տէ խրատիմք: զի մի ընդ աշխարհի դա_ տապարտիցուք ։ 33 * Ապահետև եղ բարք՝ յորժամ 'ի մի վայր ժողովիցիք ուտել՝ միմեանց մնասջիք: 34 * Ապա թէ ոք քաղցեալ իցէ՝ 'ի տան իւրում կե_ րիցէ: զի մի 'ի դատապարտութի ժո_ ղովիցիք: բայց զայլ ինչ յորժամ եկից՝ յայնժամ պատուիրեցից:

‖ Մատ. 26.26. Մարկ. 14.22. Ղուկ. 22.17.
‖ Յն. 6. 56. և 59

## ԳԼ: ԺԲ:

1 Այլ վասն հոգևորացն, եղբարք՝ ոչ կամիմ եթէ տգէտք իցէք:
2 * Գիտէք իսկ՝ զի մինչ հեթանոսքն էիք՝ առ կուռս անմռունչս որպէս եր թայիք և գայիք: 3 * Վասն որոյ ցուցա նեմ ձեզ. ‖ զի ոչ ոք Հոգւովն Այ խօսի՝ և ասիցէ նզովեալ Յս. և ոչ ոք կարէ ասել Տր զՅս, եթէ ոչ Հոգւովն սր_ բով: 4 * Թէպէտ և բաժինք շնորհաց են՝ այլ Հոգին նոյն է: 5 * Եթէ բաժինք պաշտամանց են, այլ Տր նոյն է.
6 * Եթէ բաժինք յաջողութեց են՝ այլ Աճ նոյն է. որ յաջողէ զամ յամի.
7 * Բայց իւրաքանչիւր ումեք տուեալ է յայտնութի հոգւոյն առ իւրաքանչ իւր օգուտ: 8 * Ումեմն 'ի Հոգւոյն տուեալ է բան իմաստութե. այլում բան գիտութե ըստ նմին Հոգւոյ:
9 * Միւսումն հաւատք նովին հոգւով. այլում շնորհ բժշկութեց նովին հոգ 10 ւով: * Այլում յաջողութի զօրութեց. այլում մարգարէութի. այլում ընտ րութի հոգւոց. այլում ազգք լեզուաց. այլում թարգմանութի լեզուաց:
11 * ‖ Այլ զայս ամենայն յաջողէ մի և նոյն հոգի. և բաժանէ իւրաքանչիւր 12 որպէս և կամի: * Որպէս մարմին մի է և անդամս բազումս ունի. և ամ բա զում անդամք մարմնոյն՝ մի մարմին են. 13 նոյնպէս և Քս: * Քանզի միով հոգ ւով մեք ամենեքին 'ի մի մարմին մկրտե ցաք. եթէ հրէայք, եթէ հեթանոսք. եթէ ծառայք, եթէ ազատք. ամենե 14 քին զմի հոգի արբաք: * Քանզի մար մին ոչ մի անդամ է. այլ բազումս
15 * Եթէ ասիցէ ոտն, զի չեմ ձեռն, չեմ 'ի մարմնոյ անտի, ոչ այնու չիցէ 16 'ի մարմնոյ անտի: * Եւ եթէ ասիցէ ունկն, վասն զի չեմ ակն, չեմ 'ի մար մնոյ անտի, ոչ այնու չիցէ 'ի մարմնոյ 17 անտի: * Եթէ ամ մարմին ակն էր՝ ո՞ւր էր ունկն. և եթէ ամ լսելիք էին՝ 18 ո՞ւր էին հոտոտելիք: * Բայց արդ՝ Աճ եդ զանդամսն՝ զմի մի իւրաքանչիւր 'ի նոցանէ 'ի մարմնին որպ և կամեցաւ:
19 * Ապա եթէ էր ամենայն մի անդամ, 20 ո՞ւր էր մարմին: * Բայց արդ անդամք 21 բազումք են, և մարմին մի: * Ոչ կարէ ակն ասել ձեռին, թէ չես ինձ պի_ տոյ. և կամ դարձեալ գլուխ ոտից՝ 22 թէ չէք ինձ պիտոյ: * Այլ առաւել որք թուին անդամք մարմնոյն, թէ տկարագոյնք իցեն՝ կարևորք են:
23 * Եւ որք թուին, թէ անարգագոյնք իցեն մարմնոյն, այնց առաւելագոյն պատիւ առնեմք. և ամօթոյքն մեր առաւել ևս պարկեշտութի ունին:
24 * Եւ պարկեշտագոյն մերոց չէ ինչ պի_ տոյ. քանզի Աճ խառնեաց զմարմինն, և նուաղին առաւել ևս զպատիւ ետ:
25 * Զի մի իցեն հերձուածք 'ի մարմնի անդ. այլ զի նոյնք զմիմեանց հոգաս 26 ցեն անդամքն ։ * Եւ եթէ վշտանայ ինչ մի անդամն, վշտանան ամ ան_ դամքն ընդ նմա. և եթէ փառաւորի ինչ

‖ Մարկ. 9.38.
‖ Հռոմ. 12.3.6. Եփես. 4.7.

ինչ մի անդամ, խնդան ամենայն անդամքն ընդ նմա ։ 27 * Այլ դուք մարմին Ք՟ի էք՝ և անդամք յանդամոց նէ ։ 28 * Եւ զորս եդ Ա՟Ծ յեկեղեցւոջ՝ այս են ․ նախ՝ զառաքեալս ․ երկրորդ՝ զմարգարէս ․ երրորդ՝ զվարդապետս ․ ապա զզօրութիւս ․ ապա շնորհս բժշկութեց՝ օգնութիս՝ վարիչս՝ ազգս լեզուաց՝ թարգմանութիս լեզուաց ։ 29 * Միթէ ամենեքին առաքեալք իցեն՝ միթէ ամենեքին մարգարէք իցեն ․ միթէ ամենեքին վարդապետք իցեն ։ 30 * Միթէ ամենեքին շնորհս բժշկութեն ունիցին ․ միթէ ամենեքին 'ի լեզուս խօսիցին ․ միթէ ամենեքին թարգմանիցեն ։ 31 * Բայց նախանձաւորք լերուք շնորհացն, որք լաւքն են ։ այլ ես առաւել ևս ճանապարհ ցուցանեմ ձեզ ։

Եփես․ 4․11․

## ԳԼ ։ ԺԳ ։

1 Եթէ զլեզուս մարդկան խօսիցիմ և հրեշտակաց՝ և զսէր ոչ ունիցիմ, եղէ ես իբրև զպղինձ, որ հնչէ ․ կամ իբրև զծնծղայս՝ որք զօղանջեն ։ 2 * Եւ եթէ ունիցիմ զմարգարէութի, և գիտիցեմ՝ զխորհուրդս ամենայն՝ և զամ գիտութի ․ և եթէ ունիցիմ զամ հաւատս՝ մինչև զլերինս փոփոխելոյ, և զսէր ոչ ունիցիմ, ոչինչ եմ ։ 3 * Եւ եթէ ջամբիցեմ զամ զինչս իմ աղքատաց ․ և մատնիցեմ զմարմինս իմ յայրումն ․ և զսէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ ։ 4 * Սէր երկայնամիտ է՝ քաղցրանայ ․ սէր ոչ նախանձի ․ ոչ ամբարհաւաճէ ․ ոչ հպարտանայ ։ 5 * Ոչ յանդգնի ․ ոչ խնդրէ զիւր ․ ոչ գրգռի ․ ոչ խորհի զչար ։ 6 * Ոչ խնդայ ընդ անիրաւութի ․ այլ խնդայ ընդ ստուգութի ։ 7 * Ամենայնի տանէ ․ ամի հաւատայ ․ ամենևին յուսայ ․ ամի համբերէ ։ 8 * Սէր ոչ երբեք անկանի ․ եթէ մարգարէութիք իցեն՝ խափանեսցին ․ եթէ լեզուք՝ լռեսցեն՝ եթէ գիտութի՝ խափանեսցի ։ 9 * Քանզի փոքր 'ի շատէ գիտեմք ․ և փոքր 'ի շատէ մարգարէանամք ։ 10 * Այլ յորժամ եկեսցէ կատարումն, փոքր 'ի շատէս խափանեսցի ։

խաւար բան

ԻԿ

11 * Մինչ տղայն էի՝ իբրև զտղայ խօսէի՝ իբրև զտղայ խորհէի, իբրև զտղայ համարէի ։ այլ յորժամ եղէ այր՝ զտղայութեն 'ի բաց խափանեցի ։ 12 * Այժմ տեսանեմք իբրև ընդ հայելի օրինակաւ ․ այլ յայնժամ դէմ յանդիման ․ այժմ խելամուտ եմ փոքր 'ի շատէ ․ այլ յայնժամ գիտացից՝ որպէս և նոյն ծանեաւ զիս ։

13 * Բայց արդ մնան հաւատ՝ յոյս՝ սէր ․ սոքա երեքեան ․ և մեծ քան զսոսա սէր է ։

## ԳԼ ։ ԺԴ ։

1 Զհետ երթայք սիրոյ, և նախանձաւորք լերուք հոգևորացն ․ առաւել զի և դուք մարգարէանայցէք ։ 2 * Զի որ խօսի 'ի լեզուս՝ ոչ ընդ մարդկան խօսի, այլ ընդ Ա՟Յ ․ զի ոչ ոք է՝ որ լսէ ․ բայց հոգւով խօսի 'ի խորհուրդս ։ 3 * Իսկ որ մարգարէանայն, մարդկան խօսի 'ի շինութի, և 'ի մխիթարութի ։ 4 * Որ խօսի 'ի լեզուս՝ զանձն իւր շինէ ․ իսկ որ մարգարէանայ՝ զեկեղեցին շինէ ։ 5 * Կամիմ, զի ամենեքին դուք 'ի լեզուս խօսիցիք ․ առաւել զի մարգարէանայցէք ․ զի լաւ է՝ որ մարգարէանայն քան զայն՝ որ 'ի լեզուս խօսիցի ․ բայց եթէ թարգմանիցէ՝ զի եկեղեցին զշինութի առնուցու ։ 6 * Բայց այժմ, եղբարք՝ եթէ եկից առ ձեզ 'ի լեզուս խօսելով, զինչ օգուտ լինիցիմ ձեզ՝ եթէ ոչ խօսիցիմ, կամ յայտնութեք ․ կամ գիտութեք ․ կամ մարգարէութեք ․ կամ վարդապետութեք ։ 7 * Այնպէս որպ անշունչքն զձայն տայցեն, եթէ փող և եթէ քնար ․ և եթէ զանտրութիւն ինչ բարբառոյն չառնիցեն, զիարդ ճանաչիցի փողոյն հարկանել՝ կամ քնարին հնչել ։ 8 * Քանզի եթէ խառնաձայն արձակիցի փողն, ո՞վ պատրաստեսցի 'ի պատերազմ ։ 9 * Նոյնպէս և դուք՝ եթէ լեզուօք ոչ նշանակիցէք զբանն՝ զիարդ ճանաչիցին խօսքն ․ զի լինիցիք այնուհետև իբրև ընդ օդս խօսեցեալք ։ 10 * Զի այնչափ ազգք ձայնից են յաշխարհի ․ և ոչինչ անձայն է ։ 11 * Իսկ արդ՝ եթէ ոչ գիտիցեմ զզօրութի ձայնին, լինիցիմ այնմ, որ խօսիցի ընդ իս՝ խուժ ․ և նա, որ խօսիցի ընդ իս՝ դուժ ։ 12 * Նոյնպէս և դուք՝ քանզի նախանձորդք էք հոգևորացն ․ վ՟ս շինուածոյ եկեղեցւոյն խնդրեցէք՝ զի առաւել ևս ճոխք իցէք ։ 13 * Վ՟ս որոյ՝ որ խօսի 'ի լեզուս, յէ աղօթս արասցէ՝ զի թարգմանիցէ ։ 14 * Եթէ կամ յաղօթս լեզուաւ՝ հոգին իմ կայ յաղօթս, այլ միտք իմ անպտուղք են ։ 15 * Իսկ արդ՝ զինչ իցէ ․ կացից յաղօթս հոգւով, կացից յաղօթս և մտօք ․ սաղմոս ասացից հոգւով՝ սաղմոս ասացից և մտօք ։ 16 * Ապա թէ ոչ՝ եթէ օրհնիցես հոգւով՝ որ կայցէ 'ի տեղւոջ տգիտին, զիարդ ասիցէ 'ի քում գոհութեն՝ զամէնն ․ քանզի զոր ասեսն՝ նա ոչ գիտէ ։ 17 * Զի դու բարւոք գոհանաս ․ այլ ընկերն ոչ շինի ։

* Գո_

ԿԲ

18 * Գոհանամ զԱ՟յ իմոյ՝ վս՟ ամենեցուն ձեր՝ առաւել լեզուօք խօսիմ։ 19 * Այլ ՚ի մէջ եկեղեցւոյ կամիմ բանս հինգ, մտօք խօսել՝ զի և զայլս խրատեցից, քան զբազում բանս լեզուաւ։ 20 * Եղբարք՝ մի՛ լինիք տղայք մտօք՝ այլ ՚ի չարեաց տղայացարո՛ւք. և մտօք կատարեալք լինիջի՛ք։ 21 * Քանզի և յօրէնսն գրեալ է. ‖ եթէ յօտար լեզուս՝ և ՚ի շրթունս օտարոտիս խօսեցայց ընդ ժողովրդեանդ ընդ այդմիկ՝ սակայն և ո՛չ այնպէս լուիցեն ինձ, ասէ Տ՟ր։ 22 * Ապաքէն լեզուք նշանակի վասն են. ո՛չ հաւատացելոց՝ այլ անհաւատից. իսկ մարգարէութի՟, ո՛չ անհաւատից, այլ հաւատացելոց։ 23 * Արդ եթէ գայցէ ա՟մ եկեղեցին ՚ի մի վայր, և ամենեքին ՚ի լեզուս խօսիցին. և մտանիցեն անգէտք կամ անհաւատք՝ ո՛չ ասիցեն թէ զի մոլիք։ 24 * Իսկ եթէ ամենեքին մարգարէանայցեն. և մտանիցէ ոք անհաւատ՝ կամ տգէտ, յանդիմանի յամենեցունց. և քննի յամենեցունց։ 25 * Եւ գաղտնիք սրտի նորա յայտնի լինին. և ապա անկեալ ՚ի վերայ երեսաց՝ երկիրպագանիցէ Ա՟յ. և խոստովան լինիցի՝ թէ արդարև Ա՟ծ է ՚ի ձեզ։ 26 * Եւ արդ՝ զի՞նչ իցէ եղբարք. յորժամ ՚ի մի վայր ժողովիցիք, իւրաքանչիւրոք ՚ի ձէնջ՝ եթէ զսաղմոս ունիցի, թէ զվարդապետութի՟ ունիցի, եթէ զյայտնութի՟ ունիցի, թէ զլեզուս ունիցի՝ եթէ զթարգմանութի՟ ունիցի. ա՟մ ՚ի շինութիւն լինիցի։ 27 * Եթէ ՚ի լեզուս ոք խօսեսցի՝ երկուք. և եթէ ևս առաւել՝ երեք։ և ապա միըստմիոջէ։ և մինն թարգմանեսցէ։ 28 * Ապա եթէ չիցէ ոք՝ որ թարգմանիցէ՝ լուռ լիցի յեկեղեցւոջն։ ընդ միտս իւր՝ և ընդ Ա՟յ խօսեսցի։ 29 * Այլ մարգարէք երկու, կամ երեք խօսեսցին։ և այլքն քննեսցեն։ 30 * Ապա եթէ այլոյ ումեք որ նստիցի, յայտնեսցի՝ առաջինն լռեսցէ։ 31 * Քանզի կարօղ էք ամենեքին մի ըստ միոջէ մարգարէանալ՝ զի ամենեքին ուսանիցին. և ամենեքեան մխիթարեսցին։ 32 * Եւ հոգիք իսկ մարգարէից՝ մարգարէից հնազանդին։ 33 * Զի ո՛չ եթէ խռովութեան է Ա՟ծ՝ այլ խաղաղութեան. որպ՟ յա՟մ եկեղեցիս սրբոց †։ 34 * Կանայք յա՟մ եկեղեցիս լուռ լիցին. զի ո՛չ հրամայի նց՟ խօսել՝ այլ հնազանդ լինել. որպ՟ ‖ և օրէնքն իսկ ասեն։ 35 * Ապա թէ ուսանել ինչ կամիցին՝ ՚ի տան զարս իւրեանց հարցանիցեն։ քանզի անպատեհ է կնոջ մարդոյ յեկեղեցւոջ խօսել։ 36 * Եթէ ՚ի ձէնջ բանն Ա՟յ ել։ և կամ առ ձե՞զ միայն եհաս։ 37 * Իսկ եթէ ոք կամիցի մարգարէ լինել՝ կամ հոգևոր, գիտասցէ՝ զոր գրեցից առ ձեզ՝ թէ Տ՟ն պատուիրանք են։ 38 * Ապա թէ ոք տգիտանայցէ, տգիտասցի։ 39 * Արդ յաւհետև եղբարք, նախանձեցարո՛ւք մարգարէանալ՝ և զխօսելն լեզուօք մի՛ արգելուք։ 40 * Եւ ա՟մ ինչ ձեր պարկեշտութե՟ և ըստ կարգի լինիցի։

Մարգ.: ‖ Եսայ. 28. 11. — † ամենայն — ‖ Ծննդ. 3. 16.

## Գլ: ԺԵ։

ԿԳ

1 Ծանուցանեմ ‖ ձեզ եղբարք զաւետարանն իմ, զոր աւետարանեցի ձեզ. զոր և ընկալայք. յոր և հաստատեալ էք։ 2 * Որով ապրեցայքն. որով բանիւ աւետարանեցի ձեզ՝ թէ ունիցիք։ բայց եթէ ՚ի զուր ինչ հաւատացիք։ 3 * Զի ես ձեզ զայն նախ աւանդեցի՝ զոր և ես ընկալայ. թէ և Ք՟ս մեռաւ վս՟ մեղաց մերոց, ‖ ըստ գրոց։ 4 * ‖ Եւ զի թաղեցաւ. թէ և յարեաւ 5 յաւուր երրորդի ըստ գրոց։ * Եւ ‖ թէ երևեցաւ կեփայի. և ապայ մետա 6 սանիցն։ * Ապայ երևեցաւ առաւել ևս քան զհինգ հարիւր եղբարց միանգամայն. յորոց բազումք կան մինչև 7 ցայժմ, և ոմանք ննջեցին։ * Եւ ապայ երևեցաւ յակոբայ. ապայ առաքելոցն 8 ամենեցուն։ * Յուսկ յետոյ քան զամենեսին իբրև անարգի միոջ՝ ‖ երևե 9 ցաւ և ինձ։ * ‖ Զի ես իսկեմ տրուպն առաքելոց. որ չե՛մ իսկ արժանի թէ ‖ կոչեցայց առաքեալ։ զի հալածեցի զե 10 կեղեցին Ա՟յ։ * Այլ շնորհօքն Ա՟յ եմ, զինչ և իցեմ։ և շնորհք նր՟՝ որք յիս՝ ընդունայն ինչ ո՛չ եղեն։ այլ առաւել քան զն՟ա ամենեսին վաստակեցայ։ և ո՛չ եթէ ես՝ այլ շնորհն Ա՟յ՝ 11 որ ընդ իս։ * Արդ՝ եթէ ես՝ և եթէ նոքա՝ այսպէս քարոզեցաք։ և դուք 12 այնպ՟ հաւատացիք։ * Ապա թէ Ք՟ս քարոզի՝ եթէ ՚ի մեռելոց յարուցեալ է, զիա՞րդ ասեն ոմանք ՚ի ձէնջ՝ եթէ 13 յարութի՟ մեռելոց չիք։ * Եթէ յարութի՟ մեռելոց չիք, ապա և Ք՟ս չէ 14 յարուցեալ։ * Եւ եթէ Ք՟ս չիցէ յարուցեալ, ընդունայն է քարոզութի՟ մեր. ընդունայն են և հաւատքն ձեր։ 15 * Եւ գտանիցիմք սուտ վկայք Ա՟յ. զի վկայեցաք զԱ՟յ թէ յարոյց զՔ՟ս. զոր ո՛չն արդեօք յարոյց՝ եթէ մեռեալք ո՛չ 16 յառնեն։ * Իսկ եթէ մեռեալք ո՛չ յառնեն՝ ապա և Ք՟ս չէ յարուցեալ։ 17 * Եւ եթէ Ք՟ս չիցէ յարուցեալ. ընդունայն են հաւատքն ձեր։ և տակաւին 18 ՚ի նմին մեղս կայցէք։ * Իսկ արդ՝ որք ննջեցին ՚ի Ք՟ս, կորեան արդեօք։

* Եթէ

Մարգ.: ‖ Գաղա. 1. 11. — ‖ Եսայ. 53. 5. — ‖ Յովն. 20. 15. — Յովն. 2. 3. — ‖ Գործ. 9. 3. — ‖ Եփես. 3. 8.

19 *Եթէ այսու կենօքս միայն յուսացեալ եմք 'ի Քս, ողորմելիք եմք քան զամենայն մարդիկ:

ԿԴ

20 *Այլ արդ Քս յարուցեալ է 'ի մեռելոց՝ ‖ առաջին պտուղ ննջեցելոց: 21 *Քանզի մարդով եղև մահ, և մարդով յարութիւն մեռելոց: 22 *Որպէս Ադամաւն ամենեքեան մեռանին. նոյնպէս և Քիւ ամենեքեան կենդանանասցին: 23 *‖Իւրաքանչիւր յիւրում կարգի: նախ Քս, և ապա Քսեանք 'ի գալստեան նր: 24 *Եւ ապա կատարած: յորժամ տացէ 'ի ձեռս զԹագաւորութիւն այ, և Հօր: յորժամ խափանեսցէ զամ իշխանութիւն՝ և զամ պետութիւն, և զզօրութիւն: 25 *Զի պարտ է նմա Թագաւորել՝ ‖ մինչև դիցէ զամ Թշնամիս 'ի ներքոյ ոտից իւրոց: 26 *Յետին Թշնամին խափանի մահ: ‖ և զամ ինչ հնազանդ արար 'ի ներքոյ ոտից նր: 27 այլ յորժամ ասիցէ: *Թէ հնազանդեալ է նմա ամ, յայտ է՝ Թէ բաց յայնմանէ՝ որ հնազանդեցոյց նմա զամ: 28 *Այլ յորժամ հնազանդեսցի նմա ամ՝ յայնժամ և ինքն որդի հնազանդեսցի այնմ, որ հնազանդեցոյց նմա զամ: զի եղիցի Այ ամ յամի: 29 *Ապա Թէ ոչ՝ զինչ գործիցեն, որք մկրտիցինն վս մեռելոց: եԹէ արդարև մեռեալք ոչ յառնեն. ընդէր իսկ բնաւ մկրտին վս նոցա: 30 *Ընդէր և մեք Վտանգիմք յամ ժամ: 31 *Եւ հանապազ մեռանիմք: 'ի պարծանս ձեր եղբարք՝ զոր ունիմ 'ի Քս Յս 'ի Տր մեր: 32 *ԵԹէ (վս մարդոյ) 'ի գազանամարտի լեալ էի յեփեսոս՝ զինչ օգուտ էր ինձ, եԹէ մեռեալք ոչ յառնէին: ‖ կերիցուք՝ արբցուք՝ քանզի վաղիւն մեռանիմք: 33 *Մի խաբիք. ապականեն զբարս քաղցունս բանք չարք: 34 *ԶԹափեցարուք արդարութբ՝ և մի մեղանչէք: զի գիտութիւն այ ոչ ունին ոմանք, առ ամօԹոյ ձերոյ ասեմ:

ԿԵ

35 *Այլ ասիցէ ոք. զիարդ յառնեն մեռեալք՝ կամ որով մարմնով գայցեն: 36 *Անմիտ՝ դու զոր սերմանես, ոչ կեն դանանայ՝ Թէ ոչ մեռանիցի: 37 *Եւ զոր սերմանես, ոչ զնոյն մարմին, որ ծնանելոցն իցէ, սերմանես. այլ հատ մերկ. եԹէ ցորենոյ իցէ՝ և եԹէ այլոց սերմանեաց: 38 *Եւ Այ տայ նմա զմարմինն՝ որպէս և կամի: և իւրաքանչիւրոց սերմանեացն զիւր մարմին: 39 *Ոչ ամ մարմին նոյն մարմին է: այլ այլ մարմին է մարդկան, և այլ մարմին անասնոց. այլ մարմին Թռչնոց՝ և այլ մարմին ձկանց: 40 *Եւ մարմինք երկնաւորք՝ և մարմինք երկրաւորք: այլ այլ փառք երկնաւորաց՝ և այլ փառք երկրաւորաց: 41 *Այլ փառք արեգական, և այլ փառք լուսնի. և այլ փառք աստեղաց: և աստղ քան զաստղ առաւել է փառօք: 42 *Նոյնպէս և յարութիւն մեռելոց: սերմանի ապականութբ՝ և յառնէ առանց ապականութեան: 43 *Սերմանի անարգութբ՝ և յառնէ փառօք: սերմանի տկարութբ՝ և յառնէ զօրութբ: 44 *Սերմանի մարմին շնչաւոր՝ և յառնէ մարմին հոգևոր: եԹէ գոյ մարմին շնչաւոր՝ գոյ և հոգևոր: 45 *Որպէս և գրեալ է: ‖ եղև մարդն առաջին Ադամ, 'ի շունչ կենդանի: երկրորդ Ադամ 'ի հոգի կենդանարար: 46 *Բայց ոչ նախ հոգևորն. այլ շնչաւորն, և ապա հոգևորն: 47 *Առաջին մարդն յերկրէ՝ հողեղէն: իսկ երկրորդ մարդն՝ Տր յերկնից: 48 *Որպէս հողեղէնն, նոյնպէս և հողեղէնքս: և որպէս երկնաւորն՝ նոյնպէս և երկնաւորքն: 49 *Եւ որպէս զգեցաք զպատկեր հողեղինին. զգեցցուք և զպատկեր երկնաւորին: 50 *Բայց զայս ասեմ եղբարք՝ եԹէ մարմին և արիւն զարքայութիւն այ ժառանգել ոչ կարեն: և ոչ ապականութիւն զանապականութիւն ժառանգէ: 51 *Արդ՝ զխորհուրդ մի ասեմ ձեզ: ամենեքեան ննջեսցուք, այլ ոչ ամենեքեան նորոգիցուք: 52 *Յանկարծակի յական Թօթափել՝ 'ի փող յետին: քանզի փող հարկանի, և մեռեալք յարիցեն առանց ապականութեան: և մեք նորոգիցուք: 53 *Զի պարտ է ապականութեանս այսմիկ զգենուլ զանապականութիւն: և մահկանացուիս այսմիկ զգենուլ զանմահութիւն: 54 *Այլ յորժամ մահկանացուս այս զգեցցի զանմահութիւն. և ապականացուս զանապականութիւն, յայնժամ եղիցի բանն՝ որ գրեցաւ. ‖ եԹէ ընկլաւ մահ 'ի յաղԹութիւն: 55 *Ո՞ւր է մահ յաղԹութիւն քո: ո՞ւր դժոխք խայԹոց քո: 56 *ԽայԹոց մահու մեղք են, և զօրութիւն մեղաց օրէնք: 57 *‖Այլ շնորհք այ՝ որ ետ մեզ զյաղԹութիւն 'ի ձեռն Տն մերոյ Յի Քի: 58 *Այսուհետև եղբարք իմ սիրելիք, հաստատունք եղերուք՝ անշարժ կացէք. առաւել լերուք 'ի գործս Տն յամ ժամ: գիտասջիք՝ զի վաստակքն ձեր՝ ոչ են ընդունայն առաջի Տն:

Margin notes: Կողոս. 1. 18. — Յայտ. 1. 5. — Ա.Թես. 4. 15. — Սաղմ. 109. 1. — Եբրայ. 1. 13. և 10. 13. — Սաղմ. 8. 8. — Եբրայ. 2. 8. — Իմաստ. 2. 6. — Եսայ. 22. 13. և 56. 12 — Ծննդ. 2. 7. — յերկնից՝ երկնեղէն. — ամենեքեան յարիցուք — Ովսէ. 13. 14. — Եբրայ. 2. 14. — Ա.Յովհ. 5. 5.

## ԳԼ: ԺԶ:

ԿԶ

1 Այլ վասն հաշուէին, որ 'ի սուրբսն է, որպէս պատուէրն ետու եկեղեցեացն գաղատացւոց՝ նոյնպէս և դուք արարէք:

ջիք: 2 *Ըստ իւրաքանչիւր միաշաբաթուջն իւրաքանչիւրոք 'ի ձէնջ անձին իւրում գանձեսցէ՝ որ ինչ և յաջողեսցի: 3 * Զի մի յորժամ գայցեմ, յայնժամ հաշիւք լինիցին: այլ յորժամ եկից՝ զոր միանգամ ընտրեսջիք թղթովք, զնոսա առաքեցից տանել զշնորհսն ձեր յԵ՟մ: 4 *Ապա թէ արժան իցէ և ինձ երթալ՝ ընդ իս երթիցեն: 5 *Այլ եկից առ ձեզ՝ յորժամ 'ի Մակեդոնիա անցանիցեմ: բայց իբրև շրջեցայց 'ի Մակեդոնիա, 6 *Թէ դէպ լիցի, առ ձեզ մնացից՝ և կամ ձմերեցից: զի և դուք յուղարկիցէք զիս՝ ուր և երթալոց եմ: 7 * Զի ոչ կամիմ զձեզ այժմ 'ի հարևանցի տեսանել: այլ ունիմ ժամանակ ինչ առնել առ ձեզ՝ եթէ Տ՟ր հրամայեսցէ: 8 *Բայց այժմ լինիմ յԵփեսոս մինչև ցպենտեկոստէ: 9 * Զի դուռն բացեալ է ինձ մեծ և կարևոր, և հակառակօղք բազումք են: 10 *Արդ՝ եթէ եկեսցէ Տիմոթէոս՝ տեսջիք, զիարդ աներկիւղ լինիցի առ ձեզ: զի զգործ Տ՟ն գործէ՝ ո՟պ և ես: 11 *Մի ոք զնա անգոսնեսցէ: և յուղարկեսջիք զնա խաղաղութ՟բ՝ զի եկեսցէ առ իս: քանզի ակն ունիմ նմա եղբարբք հանդերձ: 12 *Այլ վասն Ապօղոսի եղբօր՝ յոյժ աղաչեցի զնա, զի եկեսցէ առ ձեզ եղբարբք հանդերձ: և արդեօք ոչ էին կամք, զի այժմ եկեսցէ. այլ եկեսցէ, յորժամ պարապեսցի: 13 *Հսկեցէք՝ հաստատուն կացէք 'ի հաւատս: ժրացարուք՝ զօրացարուք: 14 *Ամենայն ինչ ձեր սիրով լինիցի: 15 *Աղաչեմ զձեզ եղբարք՝ գիտէք զտունն Ստեփանեայ՝ և Փորտունատեայ՝ †որք են պտուղ Աքայեցւոց: և 'ի պաշտօն սրբոյն կարգեցին զանձինս: 16 * Զի և դուք հնազանդք լինիցիք այնպիսեացն. և ամ՟ի, որ գործակից իցէ և վաստակակից: 17 *Ուրախ եղէ 'ի գալ Ստեփանեայ՝ և Փորտունատեայ՝ և Աքայիկոսի. զի զձեր պակասութ՟ի նոքա լցին: 18 *Քանզի հանգուցին զոգի իմ և զձեր: արդ ծանիջիք զայնպիսիսն: 19 *Ողջոյն տան ձեզ եկեղեցիքն Ասիայւոյ: ողջոյն շատ տան ձեզ՝ Ակիւղաս, և Պրիսկիղա՝ հանդերձ առտնին եկեղեցեաւն իւրեանց: 20 *Ողջոյն տան ձեզ եղբարք ամենեքեան: ողջոյն տուք միմեանց 'ի համբոյր սրբութ՟ե: 21 *Ողջոյնդ այդ՝ իմոյ ձեռին Պօղոսի է: 22 *Եթէ ոք ոչ սիրէ զՏ՟ր Յ՟ս, եղիցի նզովեալ՝ Մարանաթայ: 23 *Շնորհք Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի ընդ ձեզ: 24 *Եւ սէրն իմ ընդ ամենեսին ձեզ 'ի Ք՟ս Յ՟ս. Ամէն:

†Առաջին հունձ.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍՆ ԵՐԿՐՈՐԴ:

Գլուխ Առաջներորդ:



ՕՂՈՍ ԱՌԱՔԵԱԼ Յ՟ի Ք՟ի կամօքն Ա՟յ. և Տիմոթէոս եղբայր: եկեղեցւոյ Ա՟յ՝ որ է 'ի Կորնթոս. սրբովք ամենեքումբք, որք են յամ կողմանս Աքայեցւոց: 1

2 * Շնորհք ընդ ձեզ և խաղաղութ՟ի յԱ՟յ Հօրէ մերմէ՝ և 'ի Տ՟է Յ՟է Ք՟է: 3 *‖Օրհնեալ է Ա՟ծ և հայր Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի. հայր գթութեց. և Ա՟ծ ամ՟ մխիթարութ՟ե: 4 *Որ մխիթարէ զմեզ յամ նեղութիւնս մեր: առ 'ի կարօղ լինելոյ մեզ մխիթարել զայնոսիկ՝ որք յամ նեղութիւնս իցեն, մխիթարութ՟բն որով մեք մխիթարիմք յԱ՟յ: 5 * Զի ո՟պ առաւելան չարչարանքն Ք՟ի 'ի մեզ. նոյնպէս և 'ի ձեռն Ք՟ի առաւել լինի և մխիթարութիւն մեր: 6 * Զի եթէ նեղիմք վ՟ն ձերոյ մխիթարութեան և փրկութ՟ե: և եթէ մխիթարիմք վասն ձերոյ մխիթարութ՟ե: կամ քաջալերիմք վ՟ն ձերոյ քաջալերութ՟ե և փրկութ՟ե: որ յաջողեալն է համբերութ՟բ նոցին չարչարանաց. զոր և մեքն չարչարիմք: 7 *Եւ յոյսն մեր հաստատուն է վ՟ն ձեր: քանզի գիտեմք, եթէ ո՟պ կցորդք էք չարչարանացն՝ նոյնպէս և մխիթարութեանն: 8 *Քանզի ոչ կամիմ տգէտս լինել զձեզ եղբարք՝ վ՟ն նեղութ՟ե մերոյ եղելոյ յԱսիայ: զի

‖Եփես. 1. 3. 1. Պետ. 1. 3.

առա

առաւել քան զկար մեր ծանրացաք. մինչև անյոյս լինելոյ մեզ և 'ի կենաց։ 9 *Այլ անձամբ յանձինս զվճիռ մահու ընկալաք. զի մի՛ յանձինս ապաստանիցիմք՝ այլ յԱստուած՝ որ յարուցանէ զմեռեալս։ 10 *Որ յայնպիսի մահուանէ փրկեաց զմեզ՝ և փրկեսցէ։ 11 *Վասնզի յուսացեալ եմ, եթէ տակաւին փրկեսցէ օգնականութեամբ աղօթից ձերոց վասն մեր. զի 'ի բազմադէմ շնորհացն, որք են 'ի մեզ. բազմօք յաճախեսցին գոհութիւնքն վասն մեր։

12 *Վասնզի պարծանք մեր այս են. վկայութիւն մտաց մերոց. զի սրբութեամբ և ստուգութեամբ Աստուծոյ. և ոչ մարմնեղէն իմաստութեամբ. այլ շնորհօքն Աստուծոյ շրջեցաք յաշխարհի. բայց առաւել ևս առ ձեզ։ 13 *Վասնզի ոչ եթէ այլ ազգ ինչ գրեմք առ ձեզ. այլ զոր ընթեռնուցուքն՝ և գիտակ լինիցիք. քանզի յուսամ եթէ մինչև 'ի վախճան գիտիցէք։ 14 *Որպէս և խելամուտ եղէք մեզ փոքր 'ի շատէ. զի պարծանք ձեր եմք. որպէս և դուք մեր, յաւուրն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ 15 *Եւ յայս ապաստան կամէի նախ առ ձեզ գալ՝ զի դուք կրկին շնորհս ընդունիցիք. 16 *Եւ 'ի ձէնջ երթալ 'ի Մակեդոնիա. և 'ի Մակեդոնիոյ գալ առ ձեզ. և 'ի ձէնջ յուղարկել 'ի Հրէաստան։ 17 *Իսկ եթէ զայս խորհեցայ՝ մի թէ թեթևութեամբ ինչ գնացի. և կամ զոր խորհիմ ըստ մարմնոյ ինչ խորհիցիմ, (այլ) զի եղիցի յինէն կողմանէ. այոն, այո. և ոչն, ոչ։ 18 *Հաւատարիմ է Աստուած՝ զի բանն մեր՝ որ առ ձեզ եհաս՝ ոչ է այո, և ոչ։ 19 *Վասնզի Որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս, որ 'ի ձեզ մեօք քարոզեցաւ, ինև և Սիղուանոսիւ, և Տիմոթէիւ, ոչ եղև այո, և ոչ. այլ այոն 'ի նմին եղև. 20 *Զի որչափ աւետիքն Աստուծոյ՝ են 'ի նմա այոն. վասն որոյ և նովին ամէնն մեօք 'ի փառս Աստուծոյ։ 21 *Այլ որ հաստատեացն զմեզ ձեօք հանդերձ 'ի Քրիստոս, և որ էօծ զմեզ՝ Աստուած է. 22 *Որ և կնքեաց զմեզ. և ետ զառհաւատչեայ հոգւոյն 'ի սիրտս մեր։ 23 *Այլ ես վկայ զԱստուած կոչեմ անձին իմոյ. զի վասն խնայելոյ 'ի ձեզ՝ ոչ ևս եկի 'ի Կորնթոս. զի ոչ եթէ տիրեմք ձեզ հաւատովքդ՝ այլ գործակիցք եմք շնորհացդ ձերոց. քանզի հաւատովքդ հաստատեալ կայք։

(margin: այո՛ այո. և ոչ՛ ոչ.)

## ԳԼ. Բ.

Բայց զայս և եթ ընտրեցի՝ զի մի՛ միւս անգամ տրտմութեամբ եկից առ ձեզ։ 2 *Զի եթէ ես տրտմեցուցանեմ զձեզ. և ո՞վ է՝ որ ուրախ առնիցէ զիս, եթէ ոչ՝ որ տրտմիցի յինէն. 3 *Եւ զայս զի գրեցի՝ զի մի՛ յորժամ գայցեմ, զտրտմութիւն ինչ կրիցեմ, ուստի արժան իցէ ինձ ուրախ լինել. յուսացեալ եմ 'ի ձեզ ամենեսին. զի իմ ուրախութիւն՝ ձեր ամենեցուն է։

(margin: և զայս գրեցի՝)

4 *Զի 'ի բազմաց վշտաց՝ և 'ի նեղութենէ սրտի գրեցի առ ձեզ բազում արտասուօք. ոչ զի տրտմիցիք՝ այլ զի զսէրն իմ գիտասջիք, զոր ունիմ առաւելապէս առ ձեզ։ 5 *Ապա եթէ ոք տրտմեցոյց՝ ոչ եթէ զիս տրտմեցոյց. այլ փոքր 'ի շատէ՝ զի մի՛ ծանրացայց ամենեցուն ձեզ։ 6 *Շատ է այնպիսւոյն պատուհասն այն՝ որ 'ի բազմաց անտի է։ 7 *Այսուհետև նմին հակառակ մանաւանդ շնորհել ձեզ նմա՝ և մխիթարել. զի մի՛ յառաւել տրտմութենէն ընկղմեսցի այնպիսին։ 8 *Վասն որոյ աղաչեմ՝ զձեզ հաստատել 'ի նա զսէրն։ 9 *Վասն այնորիկ իսկ և գրեցի. զի զչափ առից զձեր՝ եթէ յամենայնի հպատակ իցէք։ 10 *Եթէ ումեք շնորհիցէք՝ և ես. քանզի և ես եթէ շնորհիցեմ, զորինչ շնորհիցեմ՝ վասն ձեր 'ի դէմս Քրիստոսի։ 11 *Զի մի՛ զրկիցիմք 'ի սատանայէ. քանզի ոչ եմք ինչ անտեղեակ խորհրդոցն նորա։ 12 *Այլ իբրև հասի ես 'ի Տրովադա յաւետարանն Քրիստոսի, և դուռն բաց էր ինձ 'ի Տէր. 13 *Ոչ ետու զհանգիստ հոգւոյ իմոյ. քանզի ոչ գտի ես անդ զՏիտոս զեղբայր իմ. այլ հրաժարեալ 'ի նոցանէ՝ գնացի 'ի Մակեդոնիա։ 14 *Այլ Աստուծոյ շնորհ՝ որ յամենայնի հաշակ հարկանէ զմեզ 'ի Քրիստոս Յիսուս, և զհոտ գիտութեան իւրոյ յայտնի առնէ մեօք յամենայն տեղիս. 15 *Զի հոտ անոյշ եմք Քրիստոսի առ Աստուած. 'ի մէջ փրկելոցն՝ և 'ի մէջ կորուսելոցն. 16 *Ոմանց հոտ 'ի մահուանէ 'ի մահ. և ոմանց հոտ 'ի կենդանութենէ 'ի կեանս. և առ այս ո՞ բաւական իցէ. 17 *Վասնզի ոչ եմք իբրև զայլսն, որք վաճառականք լինին բանին Աստուծոյ. այլ իբրև 'ի հաստատութենէ. այլ իբրև յԱստուծոյ. առաջի Աստուծոյ 'ի Քրիստոս խօսիմք։

## ԳԼ. Գ.

1 Սկսանիմք այսուհետև վերստին զանձինս ընծայեցուցանել ձեզ. թէպէտ և ոչ պիտոյ իցեն մեզ (որպէս ոմանց) թուղթք ընծայութեան առ ձեզ. կամ 'ի ձէնջ. 2 *Այլ թուղթք մեր դուք էք՝ գրեալ 'ի սիրտս մեր՝ ծանուցեալ՝ և ընթերցեալ յամենայն մարդկանէ։ 3 *Յայտնեալք՝ զի էք թուղթք Քրիստոսի, պաշտեցեալք 'ի մէնջ. և գրեալ՝ ոչ մելանաւ, այլ հոգւով Աստուծոյ կենդանւոյ.

ոչ 'ի տախտակս քարեղէնս, այլ 'ի տախտակս սրտի, մարմնեղէնս։

4 * Յոյս մի այսպիսի ունիմք 'ի ձեռն Քի առ Ած։ 5 * Ոչ եթէ անձամբ բաւականք եմք խորհել ինչ իբրեւ 'ի մէնջ. այլ բաւականութիւն մեր յԱյ է։ 6 * Որով բաւականս արար զմեզ պաշտօնեայս նորոյ կտակարանաց՝ ոչ գրով, այլ հոգւով. զի գիրն սպանանէ. այլ հոգին կեցուցանէ։

Գ. Դ.

7 * Օր եթէ պաշտօնն մահու գրով դրոշմեալ 'ի տախտակսն քարեղէնս եղեւ փառօք՝ զի մի կարասցեն հայել որդիքն Իլի յերեսսն մովսէսի՝ վս փառաց երեսացն, որ խափանելոցն էր։ 8 * Որչափ եւս առաւել պաշտօն Հոգւոյն եղիցի փառօք։ 9 * Օր եթէ պաշտօն դատապարտութեան փառօք էր, որչափ եւս առաւել պաշտօն արդարութեան փառօք։ 10 * Քանզի ոչ եթէ փառաւորի փառաւորեալն յայսմ մասին, վասն առաւելութեան փառացն։

11 * Օր եթէ որ խափանելոցն էր՝ այն փառօք էր, որչափ եւս առաւել՝ որ կալոցն է՝ փառօք իցէ։ 12 * Արդ՝ զի ունիմք զայսպիսի յոյս, բազմաւ համարձակութբ վարեսցուք։ 13 * ‖ Եւ ոչ որպէս մովսէսն արկանէր քօղ 'ի վերայ երեսաց իւրոց, վասն չհայելոյ որդւոցն Իլի 'ի վախճան խափանելոցն։ 14 * Այլ կուրացան միտք նց. քանզի մինչեւ ցայսօր ժամանակի նոյն քօղ ձգեալ կայ 'ի վերայ ընթերցուածոյ հին կտակարանացն. եւ ոչ վերանայ (զի Քիւ խափանելոց է։) 15 * Այլ մինչեւ ցայսօր՝ որչափ ընթեռնուն զմովսէս՝ նոյն առագաստ կայ 'ի վերայ սրտից նոցա։

‖ Ելից. 34. 33.

16 * Այլ յորժամ դարձցին առ Տր՝ ապա վերասցի առագաստն։ 17 * ‖ Օր Տր հոգին է. ուր հոգի Տն է, անդ ազատութիւն է։ 18 * Բայց մեք ամենեքեան բացօք երեսօք զփառսն Տն իբրեւ ընդ հայելի տեսեալ՝ 'ի նոյն պատկեր նորոգիմք 'ի փառաց 'ի փառս. որպէս եւ 'ի Տն հոգւոյ։

‖ Յօհ. 4. 24.

## ԳԼ. Դ.

Վասն այնորիկ ունիմք զպաշտօնս զայս՝ որպէս եւ գտաք զողորմութիւն, եւ ոչ ձանձրանամք։ 2 * Այլ հրաժարեցաք 'ի դաղտնեաց ամօթոյն. զի մի գնասցուք խորամանկութբ, եւ մի նենգեսցուք զբանն Այ. այլ յայտնութբ ճշմարտութեան ընծայեցուսցուք զանձինս մեր առ ամ միտս մարդկան առաջի Այ։ 3 * Ապա եթէ իցէ եւս ծածկեալ աւետարանն մեր՝ 'ի մէջ կորուսելոցն է ծածկեալ։ 4 * Որոց աստուած աշխարհիս այսորիկ կուրացոյց

Որոց

զմիտս անհաւատիցն, զի մի ծագեսցի 'ի նոսա լուսաւորութի աւետարանի փառացն Քի. որ է պատկեր աներեւութին Այ։ 5 * Օր ոչ եթէ զանձինս քարոզեմք՝ այլ զՅս Քս զՏէր մեր. եւ զմեզ ծառայս ձեզ վս Քի։ 6 * Օր Ած որ ասաց 'ի խաւարի զլոյս ծագել. որ եւ ծագեաց իսկ 'ի սիրտս մեր զլուսաւորութի գիտութե փառացն Այ 'ի դէմս Յի Քի։ 7 * Այսուհետեւ ունիմք զգանձս զայս յամանս խեցեղէնս. զի առաւելութի զօրութեան իցէ յԱյ, եւ ոչ 'ի մէնջ։ 8 * Յամի նեղեալք՝ այլ ոչ նուաղեալք. կարօտեալք՝ այլ ոչ տարակուսեալք։ 9 * Հալածեալք՝ այլ ոչ լքեալք. չարչարեալք՝ այլ ոչ սատակեալք։ 10 * Յամ ժամ զմահն Յի 'ի մարմինս մեր կրեսցուք՝ զի եւ կեանքն Յի 'ի մարմինս մեր յայտնեսցին։ 11 * Քանզի միշտ մեք՝ որք կենդանիքս եմք, 'ի մահ մատնիմք վս Յի. զի եւ կեանքն Յի յայտնի լիցին 'ի մահկանացու մարմինս մեր։ 12 * Այսուհետեւ մահ 'ի մեզ զօրանայ, եւ կեանք 'ի ձեզ։ 13 * Արդ՝ ունիմք զնոյն հոգի հաւատոյ. որպէս եւ գրեալ է. ‖ Հաւատացի՝ վս որոյ եւ խօսեցայ. եւ մեք հաւատամք՝ վասն որոյ եւ խօսիմք իսկ։ 14 * Զայս գիտեմք՝ եթէ որ յարոյցն զՏրն Յս, եւ զմեզ ընդ Յի յարուսցէ՝ եւ յանդիման կացուսցէ ձեօք հանդերձ։ 15 * Օր ամ ինչ վս ձեր է. զի շնորհքն յաճախեալք, 'ի բազմաց գոհութենէ անտի՝ առաւելասցին 'ի փառս Այ։ 16 * Վս որոյ եւ ոչ ձանձրանամք. այլ թէպէտ եւ արտաքին մարդս մեր ապականի՝ այլ ներքին մարդն մեր նորոգի օր ըստ օրէ։ 17 * Օր առժամայն յաճախութի թեթեւ նեղութեան մերոյ՝ 'ի յաւիտենականն առաւելութի, զմեծութի փառացն գործէ 'ի մեզ։ 18 * Քանզի ոչ դիտեմք զերեւելիսս՝ այլ զաներեւոյթսն. զի երեւելիքս առժամանակ մի են. եւ աներեւոյթքն յաւիտենականք։

‖ Սաղմ. 115. 1.

## ԳԼ. Ե.

Քանզի գիտեմք՝ եթէ երկրաւոր տաճար շինուածոյս մերոյ քակտեսցի, զշինուած յԱյ ունիմք. տաճար առանց ձեռագործի, յաւիտենական յերկինս։ 2 * Եւ ընդ այս տաղտկամք. քանզի զբնակութի երկնից փափագիմք զգենուլ։ 3 * ‖ Միայն թէ յոր ժամ զգենուցումք՝ ոչ մերկք գտանիցիմք։ 4 * Քանզի որք եմք ընդ յարկաւս այսուիկ՝ տաղտկամք ծանրացեալք. զի ոչ կամիմք մերկանալ, այլ զայն 'ի

հեծեն

‖ Յայտ. 16. 15

հեծեն

վե-

վերայ այսր զգենուլ. զի ընկղմեսցի
մահկանացուս ՚ի կենաց անտի։
*Այլ որ յաջողէն մեզ ՚ի սոյն՝ Ա՟ծ է. 5
որ ետ մեզ զառհաւատչեայ Հոգւոյն։
*Արդ՝ համարձակիմք յա՟մ ժամ, և 6
գիտեմք, եթէ որչափ յամեմք ՚ի մարմ
նի աստ՝ օտարանամք ՚ի Տ՟է. (*Զի 7
հաւատովք գնամք՝ և ոչ կարծեօք։) [illegible]
*Այլ համարձակիմք՝ և առաւել ևս 8
հաճեալ եմք ելանել ՚ի մարմնոյ աստի
և մտանել առ Տ՟Ր. *Վ՟ն որոյ և առա 9
տանամք. զի եթէ յամիցեմք՝ և եթէ
ելանիցեմք՝ հաճոյ և եթ լիցեմք նմա։
*‖ Վասնզի ամենեցուն մեզ յանդի_ 10 ‖ Հռով. 14. 10.
ման լինել կայ առաջի ատենին Ք՟Ի։
զի ընկալցի իւրաքանչիւր իւրով մար
մնով՝ զորինչ գործեաց յառաջ՝ եթէ
բարի և եթէ չար։ *Իսկ արդ զահն 11
Տ՟Ն գիտելով՝ չափ զմարդկան ինչ միտս
հաճիմք. սակայն առաջի Ա՟Յ յայտնե
լոց եմք։ բայց ես յուսամ և ՚ի ձեր
միտս յայտնի լինել։ *Իբր ոչ եթէ 12
միւսանգամ զանձինս ինչ ընծայեցու
ցանեմք ձեզ՝ այլ պատճառս տամք ձեզ
պարծանաց վ՟ն մեր. զի ունիցիք առ
այնոսիկ՝ որք առ աչօք պարծիցին՝ և
ոչ սրտիւք։ *Զի եթէ առանձաք ինչ՝ 13
այն Ա՟Յ է։ և եթէ զգաստանամք՝
այն ձեր է։ *Զի սէրն Ք՟Ի ստիպէ 14
զմեզ քննել զայս՝ զի եթէ մին փոխա
նակ ամենեցուն մեռաւ, ապաուրեմն
ամենեքեան մեռեալ էին։ *Եւ ՚ի վ՟ն 15
ամենեցուն մեռաւ Ք՟Ս։ զի որք կեն_
դանիք իցեն՝ մի անձանց իցեն կենդա
նիք. այլ այնմ, որ ՚ի վ՟ն նոցայն մե_
ռաւ՝ և յարեաւ։ *Արդ յաուհետև մեք 16
ոչ զոք գիտեմք մարմնով։ զի թէպէտ
և գիտէաք մարմնով զՔ՟Ս՝ այլ արդ
ոչ ևս նոյնպէս գիտեմք։ *Բայց եթէ 17
՚ի Ք՟Ս նոր արարած ինչ իցէ։ զի հինն
էանց. ‖ և արդ նոր եղև ա՟մ։ *Այլ 18 ‖ Եսայ. 43. 19. Յայտ. 21. 5.
ա՟մ ինչ յԱ՟Յ՝ որ հաշտեցոյց զմեզ ընդ
իւր ՚ի ձեռն Ք՟Ի։ և ետ մեզ զպաշ
տօնն հաշտութե։ *Եւ քանզի Ա՟Ծ 19
էր՝ Ք՟իւ զաշխարհս հաշտեցուցանել
ընդ իւր, և չհամարել ն՟ց զմեղս իւր_
եանց։ և եդ ՚ի մեզ զբանն հաշտութե։
*Արդ վ՟ն Ք՟Ի պատգամաւորիմք՝ Ա՟Յ 20
և Ա՟Յ բարեխօսութբ մերով։ աղաչեմ
վ՟ն Ք՟Ի հաշտեցարուք ընդ Ա՟Յ։
*Զի զայն, որ զմեղս ոչ գիտէր՝ վ՟ն 21 [illegible]
մեր մեղս արար. զի մեք եղիցուք նո_
վաւ արդարութի Ա՟Յ։

## ԳԼ. Զ.

Գործակիցք եմք ձեր՝ և աղաչեմք. 1
մի ընդունայն զշնորհսն Ա՟Յ ընդ
ունիլ ձեզ։ *‖ Զի ՚ի ժամանակի ընդ 2 ‖ Եսայ. 49. 8.
ունելութե, ասէ, լուայ քեզ։ և յաւ
ուր փրկութե օգնեցի քեզ։ ահաւա_
սիկ ժամանակ ընդունելի։ ահա օր
3 փրկութե։ *‖ Մի և մի իւիք տայցեք ‖ 1. Կորն. 10. 32.
պատճառս, զի մի արատեսցի պաշ
4 տօնն։ *Այլ յա՟մի ընծայեցուցէք զան
ձինս ձեր իբրև զպաշտօնեայս Ա՟Յ համ
բերութբ բազմաւ։ ՚ի նեղութիս. ՚ի
5 վիշտս. ՚ի չարչարանս։ *՚Ի գանս. ՚ի
բանտս. ՚ի խռովութիս. յաշխատու_
6 թիս. ՚ի հսկմունս. ՚ի պահս։ *՚Ի սր
բութե. ՚ի գիտութե. յերկայնմտու
թե. ՚ի քաղցրութե. ՚ի Հոգին Ս՟Բ. ՚ի
սէր առանց կեղծաւորութեան։
7 *՚Ի բանս ճշմարտութե. ՚ի զօրութե
Ա՟Յ։ վ՟ն զինուն արդարութե՝ որ ընդ [illegible]
8 աջմէն և ընդ ահեկէն է։ *Փառօք [illegible]
և անարգութբ։ գովութբ և պար_
սաւանօք։ իբրև մոլարք՝ և ճշմարիտք.
իբրև անծանօթք՝ և ծանուցեալք։
9 *Իբրև մահկանացուք՝ և ահաւասիկ
կենդանիք եմք։ իբրև խրատեալք՝ և
10 ոչ մահապարտեալք։ *Իբրև տրտ_
մեալք՝ և հանապազ ուրախ եմք։ իբ_
րև տնանկք՝ և զբազումս մեծացուցա
նեմք։ իբրև ոչինչ ունիմք՝ և զա՟մ ինչ
11 ունիմք։ *Բերանք մեր բացեալ են
առ ձեզ, կորնթացիք՝ և սիրտք մեր
12 ընդարձակեալք։ *Ոչինչ նեղիք ՚ի
մէնջ՝ բայց եթէ ՚ի գութս ձեր նեղի
13 ցիք։ *Արդ զնոյն հատուցումն իբրև
ընդ որդեակս ունիմ. ընդարձակեցա
14 րուք և դուք։ *Եւ մի լինիք լծակիցք
անհաւատից։ քանզի զի՞նչ հաղորդու
թիւն է արդարութե ընդ անիրաւութե։
և կամ զի՞նչ հաւասարութիւն է լուսոյ
15 ընդ խաւարի։ *Եւ կամ զի՞նչ միա_
բանութիւն է Ք՟Ի ընդ Բելիարայ։ կամ
զի՞նչ բաժին կայ հաւատացելոյն ընդ
16 անհաւատին։ *Կամ զի՞նչ նմանութի
է տաճարի Ա՟Յ մեհենաց։ ‖ ապաքէն ‖ 1. Կորն. 3. 16. 17
դուք տաճար Ա՟Յ կենդանւոյ էք։ որ՟պ և
ասաց Ա՟Ծ. ‖ Թէ բնակեցայց ՚ի նոսա. և 6. 19.
և գնացից ՚ի նոսա՝ և եղէց նոցա Ա՟Ծ։ ‖ Ղ՟ևտ.
և նոքա եղիցին իմ ժողովուրդք։ 26. 12.
17 *Վասն որոյ ելէք ՚ի միջոյ նոցա՝ և մեկ
նեցարուք, ասէ Տ՟Ր։ և ՚ի պիղծս մի
18 մերձենայք։ *Եւ ես ընկալայց զձեզ։
‖ և ես եղէց ձեզ ՚ի հայր։ և դուք եղի ‖ Երեմ.
ջիք ինձ յուստերս, և ՚ի դստերս, ասէ 31. 9.
Տ՟Ր ամենակալ։

## ԳԼ. Է.

Գ. Զ.

1 Իսկ որովհետև զայս աւետիս ու_
նիմք սիրելիք՝ սրբեսցուք զանձինս
մեր յա՟մ պղծութե մարմնոյ և հոգւոյ.
կատարեսցուք զսրբութի ահիւն Ա՟Յ։
2 *Տարայք մեզ, զի ոչ ումեք մեղաք.

եւ ոչ զոք եղծաք. եւ ոչ զոք զրկեցաք:
3 * Ոչ եթէ 'ի դատապարտութիւն ինչ ասեմ. քանզի յառաջ իսկ ասացի, եթէ 'ի սիրտ մերում կայք՝ 'ի կեալ եւ 'ի մեռանիլ ընդ ձեզ:
4 * Բազում համարձակութիւն է ինձ առ ձեզ. բազում պարծանք են ինձ վ՟ ձեր. լի եմ մխիթարութբ՟՝ առաւելեալ եմ ուրախութբ՟ յա՟մ նեղութիւնս մեր:
5 * Քանզի յորժամ հասաք մեք 'ի Մակեդոնիա, եւ ոչ միով իւիք հանգիստ գտաւ մարմինս մերում՝ այլ յա՟մի նեղեալք. քանզի արտաքոյ մարտք՝ եւ 'ի ներքոյ արհաւիրք:

Ն. 'ի ներ քուստ

6 * Այլ որ մխիթարէն զխոնարհս, մխիթարեաց զմեզ Ա՟ծ 'ի գալստեանն տիտոսի:
7 * Ոչ միայն 'ի գալստեան նր՟՝ այլ եւ 'ի մխիթարութեան՝ զոր մխիթարեցաւն 'ի ձեզ. 'ի պատմել մեզ զանձուկն ձեր՝ զողբումն ձեր՝ զնախանձն ձեր վասն իմ, մինչ առաւել ուրախ լինիլ ինձ:

որով մխի թարեցաւ

8 * Զի թէ եւ տրտմեցուցի զձեզ թղթովն՝ ոչ զղջանամ, թէպէտ եւ զղջացեալ էի: քանզի տեսանեմ՝ զի թուղթն այն (թէ եւ առ ժամանակ մի) տրտմեցոյց զձեզ:
9 * Արդ ուրախ եմ, ոչ զի տրտմեցայք՝ այլ զի յապաշխարութիւն տրտմեցայք: քանզի տրտմեցայք դուք ըստ Ա՟յ. զի մի իւիք զրկեսջիք 'ի մէնջ:
10 * ‖ Զի որ ըստ ա՟յն տրտմութիւն է, զապաշխարութիւն 'ի փրկութիւն առանց զղջանալոյ գործէ. իսկ աշխարհի տրտմութիւն զմահ գործէ:

‖ 1. Պետ. 2. 19.

11 * Արդ նոյն իսկ որ ըստ ա՟յ տրտմեցայք՝ որչափ ինչ փոյթ գործեաց 'ի ձեզ. կամ աղերս՝ կամ սաստ՝ կամ երկիւղ՝ կամ անձուկ՝ կամ նախանձ՝ կամ վրէժխնդրութիւն: քանզի յա՟մի ընծայեցուցիք զանձինս ձեր՝ սուրբ լինել յիրիդ յայդմիկ:
12 * Ապա ուրեմն թէ եւ գրեցի ես առ ձեզ՝ ոչ վ՟ այնորիկ՝ որ զրկեացն. եւ ոչ վ՟ այնորիկ՝ որ զրկեցաւն. այլ վ՟ յայտնի լինելոյ փութոյն մերոյ՝ զոր ունիմք վ՟ ձեր առաջի Ա՟յ:
13 * Վ՟ այնորիկ մխիթարեալ եմք 'ի վերայ մխիթարութեան մերոյ: առաւել եւս խնդացաք 'ի վերայ խնդութեան տիտոսի: քանզի հանգուցեալ էր հոգի նր՟ 'ի ձէնջ ամենեցունց:
14 * Զի զինչ եւ պարծեցայ առ նմա վ՟ ձեր՝ ոչ ամաչեցի: այլ ո՟պ զա՟մ ճշմարտութբ՟ խօսեցաք ընդ ձեզ, նոյնպէս եւ պարծանքն մեր առ տիտոս ճշմարիտք եղեն:
15 * Եւ գութք նր՟ առաւել եւս են 'ի ձեզ. քանզի յիշեցուցանէր մեզ զամենեցուն ձեր զհնազանդութիւն: թէ որպէս ահիւ եւ դողութբ՟ ընկալայք զնա:
16 * Եւ արդ ուրախ եմ, զի յա՟մի համարձակ եմ առ ձեզ:

## ԳԼ: Ը:

Գ Կ

1 Ծանուցանեմ ձեզ եղբարք զշնորհսն Ա՟յ՝ որք տուեալ են եկեղեցեացն Մակեդոնացւոց:
2 * Զի մեծաւ հանդիսիւ նեղութեան՝ առաւելութիւն խնդութեան նց՟. եւ ծանր աղքատութիւն նց՟ առաւել եղեւ 'ի մեծութիւն առատութեան նց՟:
3 * Զի ըստ կարի նց՟ վկայեմ,
4 եւ աւելի քան զկար: * Ինքնակամ բազում աղաչանօք աղաչէին զշնորհսն, եւ զհաղորդութիւն պաշտամանն, որ 'ի սուրբսն՝ տալ մեզ:
5 * Ոչ որչափ ակն ունէաք, այլ եւ զանձինս եւս ետուն. նախ Տ՟ն՝ եւ ապա մեզ կամօքն Ա՟յ.
6 * Աղաչել զտիտոս՝ զի ո՟պ սկսաւ յառաջագոյն, նոյնպէս եւ կատարեսցէ 'ի ձեզ եւ զայդ եւս շնորհ:
7 * Այլ որպէս յա՟մի առաւել էք հաւատովք՝ եւ բանիւ, եւ գիտութբ՟՝ եւ ա՟մ փութով: եւ որ 'ի մէնջ 'ի ձեզ սէրն է. զի եւ յայդմ եւս շնորհի առաւել լինիջիք:
8 * Ոչ ո՟պ հրաման տալով ասեմ. այլ վ՟ այլոց փութոյ, եւ վ՟ ձերոյ սիրոյ՝ զմտերմութիւնդ փորձեմ:
9 * Քանզի գիտէք զշնորհսն Տ՟ն մերոյ Յի՟ Քի՟: զի վ՟ ձեր աղքատացաւ՝ որ մեծատունն էր. զի դուք նր՟ աղքատութբ՟ն մեծասջիք:
10 * Եւ խրատ մի յայսմիկ տամ. զի այն իսկ օգուտ ձեզ է. որք ոչ միայն զառնելն՝ այլ եւ զկամիլն յառաջագոյն սկսայք 'ի հերուն հետէ:
11 * Բայց արդ եւ զառնելն իսկ կատարեցէք. զի ո՟պ յօժարութիւն 'ի կամելն է, նոյնպէս եւ առնելն ըստ գոյին:
12 * Զի եթէ յօժարութիւն առաջիկայ, ըստ գոյին ընդունելի է՝ եւ ոչ եթէ ըստ չգոյին:
13 * Զի ոչ եթէ այլոց զհանգիստ կամիցիմ, եւ ձեզ զնեղութիւն,
14 * Այլ հաւասարութբ՟. այժմու ժամանակիս, ձեր առաւելութիւնդ 'ի նոցա պակասութեանն: զի եւ նց՟ առաւելութիւն եղիցի 'ի ձերում պակասութեանդ, զի եղիցի հաւասարութիւն ո՟պ եւ գրեալ է:
15 * ‖ Թէ որ զբազումն էառ՝ ոչ առաւելաւ. եւ որ զսակաւն էառ՝ ոչ նուազեցաւ:

‖ Ելից 16. 18.

Գ Բ

16 * Բայց շնորհք Ա՟յ՝ որ էարկ զնոյն փոյթ վ՟ ձեր 'ի սիրտ տիտոսի:
17 * Զի զաղաչանսն ընկալաւ՝ եւ փութացաւ. յօժարագոյն դիմեաց գալ առ ձեզ:
18 * Եւ առաքեցաք ընդ նմա զեղբայրն՝ որոյ գովութիւն յաւետարանի անդ է ընդ ա՟մ եկեղեցիս:
19 * Եւ ոչ այսչափ միայն, այլ եւ ձեռնադրեալ յեկեղեցեաց անտի, ընդհակից մեր եղեւ 'ի շնորհս յայսոսիկ՝ որք պաշտին 'ի մէնջ 'ի փառս Տ՟ն եւ 'ի մեր յօժարութիւն:

* Բայց

20 * Բայց զայս խղճեաք իսկ՝ թէ արատ ոք ինչ դնիցէ 'ի հաստատութենս յայսմիկ՝ որ պաշտեցաւս 'ի մէնջ: 21 *‖ Վասն զի խորհիմք զբարիս, ոչ միայն առաջի Տն. այլ և առաջի մարդկան: 22 * Եւ առաքեցաք ընդ նոսա զեղբայրն մեր՝ զոր ընտրեցաք 'ի բազում իրս՝ բազում անգամ՝ պինդ գտեալ: և առաւել ևս այժմ պնդագոյն՝ յուսով մեծաւ 'ի ձեզ: 23 * Բայց եթէ վասն տիտոսի ինչ քանք են, իմ հաւասարէ՝ և ձեր գործակից. և եթէ եղբարք մեր, առաքեալք եկեղեցւոյ՝ և փառք Քի: 24 * Եւ արդ զհանդէս սիրոյ ձերոյ՝ և ըղձ մերոյ պարծանացն վն ձեր, 'ի դէմս ցուցջիք յանդիման ամ եկեղեցեացն:

‖ Հռով. 12.17.

## Գլ: Թ:

Գ.Գ

1 Եւ վն պաշտամանն որ 'ի սուրբս է՝ աւելի է ինձ գրել առ ձեզ: 2 * Զի գիտեմ զյօժարութի ձեր, զոր վն ձեր պարծեցեալեմ 'ի մէջ մակեդոնացւոցն. թէ աքայեցիքն 'ի հերուն հետէ պատրաստեն. և ձեր նախանձն զբազումս յորդորեաց: 3 * Եւ առաքեցաք զեղբարսն՝ զի մի պարծանքն մեր՝ որք վասն ձեր՝ ընդունայն լինիցին 'ի մասինդ յայդմիկ. այլ (որպէս ասէի իսկ՝) պատրաստագոյնք գտանիջիք: 4 * Գուցէ յորժամ գայցեն ընդ մեզ մակեդոնացիքն՝ և գտանիցեն զձեզ անպատրաստս, և ամաչեսցուք մեք, (զի մի ասասցուք թէ դուք) 'ի մասինդ յայդմիկ պարծանաց: 5 * Արդ կարևոր համարեցայ աղաչել զեղբարս, զի յառաջագոյն եկեսցեն առ ձեզ. և յառաջագոյն պատրաստեսցեն, զյառաջագոյն խոստացեալ օրհնութիւն ձեր 'ի պատրաստի ունել: այնպէս իբրև զօրհնութի, և մի իբրև զագահութի: 6 * Քանզի որ սերմանէ ժլատելով՝ ժլատելով և հնձեսցէ: և որ սերմանէ առատութբ՝ առատութբ և հնձեսցէ: 7 * Իւրաքանչիւր ոպ և յօժարիցի ոք սրտին. մի առ հարկի և տրտմութե: ‖ քանզի զտուրս զուարթս առատս սիրէ Ած: 8 * Այլ կարող է Ած զամ շնորհս առաւելուլ 'ի ձեզ: զի յամի յամ ժամ զամ բաւականութի ընկալեալ՝ առաւելուցուք յամ գործս բարութե: 9 * Որպէս և գրեալ է: ‖ սփռեաց, և ետ աղքատաց՝ արդարութի նորա մնայ յաւիտեան:

‖ Սիրաք. 35.11.

‖ Սաղմ. 111.9.

Գ.Գ

10 *‖ Այլ այն՝ որ պարգևէ զսերմն սերմանաց՝ և զհաց 'ի կերակուր, պարգևեսցէ՝ և բազմացուսցէ զսերմանս ձեր. և աճեցուսցէ զարդիւնս արդարութե ձերոյ: 11 * Յամի մեծացեալք ամ առատութբ՝ որ յօրինէ մեօք զգոհութի Այ: 12 * Զի պաշտօն հարկիս այսորիկ՝ ոչ միայն առ 'ի լնուլ զպակասութի սրբոցն է. այլ և առաւելուլ բազմօք գոհութիս Այ: 13 * Հանդիսիւ պաշտամանս այսորիկ փառաւորել զԱծ 'ի վն հնազանդութե խոստովանութե ձերոյ յաւետարանն Քի: և առատութբ հաղորդութեն 'ի նոսա՝ և յամենեսին: 14 * Եւ նոցա աղօթք վն ձեր՝ քանզի անձկացեալ են առ ձեզ վասն առաւել շնորհացն Այ որ 'ի ձեզ: 15 * Այլ շնորհք Այ 'ի վերայ անպատում պարգևացն նորա:

‖ Եսայ. 55. 10.

## Գլ: Ժ:

Գ.Ե

1 Այլ ես իսկ պօղոս աղաչեմ զձեզ հեզութբ և հանդարտութբն Քի. որ յանդիման ձեզ՝ իբրև զտառապեալ մի եմ՝ 'ի միջի ձերում: բայց 'ի հեռուստ համարձակիմ առ ձեզ: 2 * Աղաչեմ, զի մի 'ի մօտոյ և եթ համարձակիցիմ վստահութբ. կամ համարիցիմ յանդգնիլ 'ի վերայ ոմանց՝ որք կարծեն զմէնջ՝ եթէ ըստ մարմնոյ գնայցեմք: 3 * Զի թէպէտ և մարմնով գնամք՝ այլ ոչ եթէ ըստ մարմնոյ զինուորիմք: 4 * Զի զէն զինուորութե մերոյ ոչ է մարմնաւոր, այլ զօրաւոր յԱյ, առ 'ի քակելոյ զամուրս. զխորհուրդս քակեմք, 5 * Եւ զամ բարձրութի հպարտացեալ 'ի վերայ գիտութե Այ. և գերեմք զամ միտս 'ի հնազանդութին Քի: 6 * Եւ 'ի պատրաստի ունիմք խնդրել զվրէժ ամ անհնազանդութե, յորժամ ձեր ևս հնազանդութիւնդ կատարեսցի: 7 * Ըստ իւրաքանչիւր երեսաց դիտեսջիք: եթէ ոք վստահ յանձն իցէ Քի լինել, զայս խորհեսցի դարձեալ 'ի միտս իւր. թէ որպէս նայն Քի է՝ նոյնպէս և մեք: 8 * Զի թէ առաւել ևս պարծեցայց վն իշխանութե մերոյ՝ զոր ետ մեզ Տր 'ի շինել՝ և ոչ 'ի քակել զձեզ՝ ոչինչ ամաչեցից: 9 * Զի մի թուեցայց իբրև զահ ինչ արկանել ձեզ թղթովքս: 10 * Ասիցէք, թուղթս ծանունք են և սաստիկք: այլ տեսիլ մարմնոյ տկար՝ և բանն արհամարհեալ: 11 * Զայս խորհեսցի այնպիսին, զի որպիսիք եմք բանիւք թղթոյդ 'ի հեռուստ, նոյնպիսիք և 'ի մօտոյ արդեամբք: 12 * Զի ոչ իշխեմք կշռել և հաւասարել զանձինս մեր ոմանց, որք զանձինս իւրեանց ձեզ ընծայեցուցանեն: այլ անձամբք յանձինս զանձինս չափեն: և 'ի կշռել անձամբք յանձինս՝ ոչ առնուն 'ի միտ: 13 * Այլ մեք ոչ եթէ յանչափս ինչ պարծի_

Եփես. 4. 7.

ծիցուք: այլ ըստ չափու կանոնին, զոր բաժանեաց մեզ Այ չափու՝ հասանել մինչև առ ձեզ: *Իբր ոչ եթէ հասեալ ինչ չիցեմք 'ի ձեզ, և ձգտեցուցանեմք զանձինս. քանզի մինչև առ ձեզ հասաք աւետարանաւն Քի: *Եւ ոչ յանչափս ինչ պարծիմք օտար վաստակօք: բայց զյոյս մի ունիմք զաճմանն հաւատոց ձերոց՝ անդրէն 'ի ձեզ մեծանալոյ՝ ըստ կանոնիս մերոյ յառաւելութի: *'Ի վեր ևս քան զձեզ աւետարանել՝ ոչ օտար կանոնաւ 'ի պատրաստականս ինչ պարծիլ:

Երեմ. 9.23. 1. Կոր. 1.31.

*Զի որ պարծի՝ 'ի Տր պարծեսցի: *Զի ոչ եթէ որ զանձն ընծայեցուցանէ՝ նա է ընտրեալ. այլ զոր Տրն ընծայեցուցանէ:

## ԳԼ: ԺԱ.

Դ. Օ.

Աւ էր եթէ ներէիք փոքր մի և իմում անզգամութեանս. այլ և անսայցէք իսկ: *Նախանձեցուցանեմ զձեզ 'ի նախանձն Այ. զի խօսեցայ զձեզ առն միում, իբրև զկոյս մի սուրբ յանդիման կացուցանել Քի: *Բայց երկնչիմ, մի՛ օձն խաբեաց զեւայ խորամանկութեամբ իւրով՝ ապականեսցին միտք ձեր 'ի միամտութենէն՝ որ 'ի Քս: *Զի եթէ որ գալոցն իցէ՝ զայլ Քս քարոզիցէ՝ զոր մեք ոչ քարոզեցաք: կամ զոգի օտար առնուցուք՝ զոր ոչ առիք. կամ աւետարան օտար՝ զոր ոչ ընկալայք. բարւոք անսայիք նմա: *Բայց ես այսպէս համարիմ, թէ ոչ ինչ իւիք պակաս իցեմ քան զլաւ առաքեալսն: *Թէպէտ և տգէտ ևս իցեմ բանիւ, այլ ոչ եթէ գիտութեամբ: սակայն յամենայնի յայտնեցաք զանձինս ամենեւին առ ձեզ: *Եւ եթէ զմեղս ինչ գործեցի, զի զանձն խոնարհեցուցի. և այն, զի դուք բարձրասջիք: զի ձրի զաւետարանն Այ աւետարանեցի ձեզ: *Զայլ եկեղեցիս կողոպտեցի առեալ զթոշակ 'ի ձեր սպասաւորութիւն: *Եւ յորժամ եկի առ ձեզ, թէպէտ և պակասեցայ ինչ, ոչ զոք 'ի ձէնջ ձանձրացուցի: զի զպակասութիւն իմ լցին եղբարքն եկեալք 'ի Մակեդոնացւոց: և յամենայնի առանց ծանրանալոյ ձեզ զանձն իմ պահեցի՝ և պահեցից: *Քանզի գոյ յիս ճշմարտութիւն Քի, զի պարծանքս այս ոչ արգելցին յինէն 'ի կողմանս աքայեցւոց: *Ընդէ՞ր: իբրու թէ ոչ սիրիցեմ զձեզ: զայն Այ գիտէ: *Զոր առնեմս՝ և արարից: զի հատից զպատճառս այնոցիկ՝ որք զպատճառսն կամիցին: զի որով պարծիցին, և նոքա իբրև զմեզ գտանիցին: *Զի այնպիսիքն են սուտ առաքեալք. մշակք նենգաւորք. կերպարանին 'ի կերպարանս առաքելոցն Քի: *Եւ չէն ինչ զարմանք: քանզի և ինքն սատանայ կերպարանի 'ի հրեշտակ լուսոյ: *Եւ ոչինչ է մեծ՝ թէ և պաշտօնեայք նր կերպարանին իբրև պաշտօնեայք արդարութե: որոց կատարածն եղիցի ըստ գործոց իւրեանց:

*Դարձեալ ասեմ, (մի ոք համարեսցի զիս անզգամ: ապա թէ ոչ՝ գոնէ իբրև զանզգամ ընկալարուք զիս. զի և ես փոքր մի ինչ պարծեցայց:) *Եւ զոր խօսիմս՝ ոչ եթէ ըստ Տն խօսիմ, այլ իբրև անզգամութբ՝ ըստ կարգի այդց պարծանաց: *Եւ քանզի բազումք պարծին ըստ մարմնոյ՝ և ես պարծեցայց: *Անսայիք իսկ անմտացն ձերով իմաստութբ: *Քանզի անսայք, եթէ ոք խաբէ զձեզ. եթէ ոք ծառայեցուցանէ. եթէ ոք ուտէ զձեր. եթէ ոք առնու ինչ. եթէ ոք հպարտանայ. եթէ ոք զձեզ յանդիման հարկանէ: *Ըստ անարգանաց ասեմ, իբրև թէ մեք տկարացաք արդեօք: յորինչ ոք համարձակիցի (անզգամութբ ասեմ) համարձակիմ և ես: *Եբրայեցիք իցեն, և ես: իսրայելացիք իցեն, և ես: զաւակք աբրահամու իցեն, և ես: *Պաշտօնեայք Քի իցեն (յանդգնագոյնս ասացից) թէ առաւել ևս ես: եթէ վաստակօք՝ առաւել: եթէ գանիւք՝ ևս առաւել: եթէ բանտիւ, աւելի քան զնոսա: եթէ մահուամբք՝ բազում անգամ: *'Ի հրէից հնգիցս, քառասուն միով պակաս արբի: *Երիցս ձաղկեցայ: մի անգամ քարկոծ եղէ: երիցս նաւաբեկ եղէ: զտիւ և զգիշեր յանդունդս տառապեցայ: *'Ի ճանապարհս բազում անգամ: վիշտս 'ի գետոց. վիշտս յաւազակաց. վիշտս յազգէ. վիշտս 'ի հեթանոսաց. վիշտս 'ի քաղաքի. վիշտս յանապատի. վիշտս 'ի ծովու. վիշտս 'ի սուտ եղբարց: *'Ի ջանս՝ և 'ի վաստակս. 'ի տքնութիւնս բազում անգամ: 'ի քաղց և 'ի ծարաւ. 'ի պահս բազում անգամ: 'ի ցուրտ և 'ի մերկութե: *Թող զայլ նեղութիւնս. և զի հանապազ խուժանն 'ի վերայ իմ կուտին՝ և հոգք ամ եկեղեցեացն: *Ո՞ հիւանդանայ՝ և ես ոչ հիւանդանամ: ո՞ գայթագղի, և ես ոչ տապանամ: *Եթէ պարծիլ ինչ պարտ իցէ՝ զտկարութեն պարծեցայց: *Այ և հայր Տն մերոյ Յի Քի գիտէ՝ որ է օրհնեալ յաւիտեանս, զի ոչ ստեմ: *'Ի դամասկոս ազգապետն արետայ արքային

Բ. Օրէ. 25.3. Գործ. 16.22. Գործ. 14.18. Գործ. 27.4. Գործ. 9. 24.

արքային պահէր զքաղաքն դամասկացւոց ունել զիս։ *Եւ ընդ պատուհանն 33 վանդակաւ կախեցայ ընդ պարիսպն, և փախեայ 'ի ձեռաց նորա։

## ԳԼ. ԺԲ.

Պարծել ինչ պարտ իցէ (այլ օգնէ ինչ ոչ։) բայց եկից 'ի տեսիլս և յայտնութիւնս Տն̃։ *‖Գիտեմ 2 զայր մի 'ի Քս̃ յառաջ քան զչորեքտասան ամ (եթէ մարմնով ոչ գիտեմ. և եթէ առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ, ա̃ծ գիտէ) յափշտակեալ զայնպիսին մինչև յերրորդ երկինս։ *Եւ գիտեմ 3 զայնպիսի այր (եթէ մարմնով և եթէ առանց մարմնոյ՝ ոչ գիտեմ, Ա̃ծ գիտէ։)* Զի յափշտակեցաւ 'ի դրախտն. 4 և լուաւ զբանս անճառս. զորս ոչ է պարտ մարդոյ խօսել։* Վասն այնպիսւոյն պարծեցայց։ այլ վ̃ն անձին իմոյ 5 ոչ պարծեցայց՝ բայց եթէ 'ի տկարութիւնս։* Զի եթէ և կամիցիմ պարծել՝ 6 ոչ եղէց անզգամ. քանզի զճշմարիտ ասեմ. այլ խնայեմ, գուցէ ոք համարիցի յիս աւելի՝ քան զոր տեսանիցէ յիս՝ կամ լսիցէ յինէն։ *Եւ զի 7 մի առաւելութեամբ յայտնութեանցն հպարտացայց, տուաւ ինձ խայթ մարմնոյ՝ հրեշտակ սատանայի կոփել զիս. զի մի հպարտացայց։ *Եւ վ̃ն այնորիկ 8 երիցս անգամ աղաչեցի զՏէր, զի 'ի բաց արասցէ յինէն։ *Եւ ասէ ցիս՝ 9 շատ է քեզ շնորհ իմ. զի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի. և արդ՝ լաւ ևս լիցի ինձ պարծել 'ի տկարութիւնս. զի բնակեսցէ յիս զօրութիւն Քի̃։

*Վ̃ս որոյ հաճեալ եմ ընդ տկարութիւնս. ընդ թշնամանս. ընդ վիշտս. 10 ընդ հալածանս. և ընդ նեղութիւնս վ̃ն Քի̃. զի յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ։* Եղէ անզգամ, քանզի 11 դուք ստիպեցէք զիս. զի ինձ պարտ էր 'ի ձէնջ զվկայութիւն առնուլ. թէ ոչինչ պակաս գտայ քան զլաւ առաքեալսն. զի թէպէտ ես ոչինչ եմ։ *Նշանք առաքելոյ գործեցան 'ի ձեզ՝ 12 ամ̃ համբերութբ̃, նշանօք և արուեստիւք՝ և զօրութբ̃ք։ *Եւ արդ զինչ 13 իցէ՝ որով պակաս գտայ քան զայլ եկեղեցիս. բայց եթէ այնու՝ զի ես զձեզ ոչ ձանձրացուցի. շնորհեցէք ինձ զմեղս զայդ։ *Ահաւասիկ այս երիցս 14 անգամ պատրաստեալ եմ գալ առ ձեզ. և ձեզ բեռն ինչ՝ ոչ եղէց. քանզի ոչ խնդրեմ ինչ զձեր՝ այլ զձեզ. քան զի ոչ պարտին որդիք հարց գանձել՝ այլ հարք որդւոց։ *Բայց ես մտա- 15 դիւրութբ̃ ծախեցից, և ծախեցայց

վ̃ն անձանց ձերոց. զի թէպէտ և յաւելեալ սիրոյն զձեզ սակաւ սիրիցեմ։ 16 *Այլ դիցուք թէ ես ոչինչ ծանրացայ ձեզ. այլ քանզի խորագէտ էի, խաբէբայութեամբ կալայ զձեզ։ 17 *Միթէ որովք առաքեցի առ ձեզ՝ նոքօք ագահեցի՞ ինչ 'ի 18 ձէնջ։ *Աղաչեցի զտիտոս՝ և առաքեցի ը̃ նմա զեղբայրն. միթէ ագահեա՞ց ինչ զձեր տիտոս. ո՞չ նովին ոգւով գնացաք. ո՞չ նովին շաւղօք շրջեցաք։ 19 *Դարձեալ համարիցիք՝ եթէ յողոք անկեալ ինչ ձեզ աղերսիցեմք. առաջի Այ̃ 'ի Քս̃ խօսիմք. զի ամ̃ ինչ սիրելիք վ̃ն ձերոյ շինութե է։ 20 *Այլ երկնչիմ, գուցէ եկեալ՝ ոչ որպիսիս կամիմ, գտանիցեմ զձեզ. և ես գտանիցիմ ձեզ՝ զորպիսի և դուք ոչ կամիցիք. գուցէ դարձեալ՝ հեռ, նախանձ, սրտմտութիւնք, գրգռութիւնք, չարախօսութիւնք, քսութիւնք, հպարտութիւնք, ամբարտաւանութիւնք, խռովութիւնք՝ իցեն 'ի մէջ 21 ձեր։ *Գուցէ դարձեալ յորժամ գայցեմ, նկուն ինչ առնիցէ զիս Ա̃ծ իմ առ ձեզ. և զսուգ առնուցում վ̃ն բազմաց յառաջագոյն մեղուցելոց՝ և ոչ ապաշխարելոց՝ 'ի վ̃ր պղծութե, և պոռնկութե, և գիջութե՝ զոր գործեցին։



## ԳԼ. ԺԳ.

1 Այս երիցս անգամ գամ առ ձեզ. ‖զի 'ի բերանոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ամ̃ բան։ 2 *Յառաջ ասացի՝ և դարձեալ կանխաւ ասեմ. յանդիմանն երկիցս անգամ. և այժմ 'ի բացուստ գրեմ, յառաջագոյն յանցուցելոյն՝ և այլոցն ամենեցուն. զի եթէ եկից դարձեալ՝ ոչ 3 խնայեցից։ *Եթէ զփորձ ինչ խնդրէք Քի̃, որ ինևս ընդ ձեզ խօսի. որ հզօրացեալն է 'ի ձեզ, և ոչ տկարա- 4 ցեալ։ *Զի թէպէտ և խաչեցաւ 'ի մերմէ տկարութե. այլ կենդանի է զօրութբ̃ն Այ̃. և մեք թէպէտ և տկարանայցեմք վ̃ն նր̃. այլ կենդանի լինիցուք ընդ նմա զօրութբ̃ն Այ̃։ 5 *Փորձեցէք զանձինս ձեր. եթէ կայք 'ի նոյն հաւատս. քննեցէք զանձինս. եթէ ո՞չ գիտէք զանձինս՝ զի Քս̃ Յս̃ 'ի ձեզ է. բայց եթէ անպիտանք իցէք։ 6 *Այլ ակնունիմ՝ թէ գիտիցէք. զի մեք ոչ եմք անպիտանք։ 7 *Այլ խնդրեմք յԱյ̃՝ զի մի ինչ արասցէ զչար. ոչ զի մեք ընտիրք երևիցուք. այլ զի դուք զբարիս գործիցէք՝ և մեք անպի 8 տանք իցեմք։ *Զի ոչ կարեմք ինչ հակառակ կալ ճշմարտութեն. այլ վերակացուք եմք ճշմարտութեն։ 9 *Խրախ եմք՝ յորժամ մեք տկարանայ ցեմք՝

Margin notes: Գործ. 9. 3. — Բ. Գ. — առաքե- լութե — կարծ — սիրելոյս — պիտէ՝ առ — իմ սէրն — ցեմ. — Բ. Օ. — ‖2. Օրէ. 19. 15. — Մատ. 18. 16. — Յովհ. 8. 17. — Եբրայ. 10. 28. — ապա իբր ոչ անպի տանք էք։ — Բ. Դ. — զի ոչ իբր անպի- տանք ցէք։

ցնծամք՝ եւ դուք զօրաւորք լինիցիք. զայդ իսկ եւ աղօթս առնեմք զձեր հաստատութիւն։ 10 Վասն այսորիկ զայս ՚ի հեռաստանէ գրեմ. զի մի յորժամ եկից՝ սաստկութեամբ վարեցայց՝ ըստ իշխանութեանն, զոր ետ ինձ Տր ՚ի շինել եւ ոչ ՚ի քակել։ 11 Այսուհետեւ եղբարք, ուրախ լերուք՝ հաստատունս կացէք՝ մխիթարեցարուք՝ միաբանս լերուք՝ խաղաղութիւն արարէք։ Եւ Ած խաղաղութեան եւ սիրոյ եղիցի ընդ ձեզ։ 12 Ողջոյն տուք միմեանց ՚ի համբոյր սրբութեան։ ողջոյն տան ձեզ սուրբք ամենեքեան։ 13 Շնորհք Տն մերոյ Յի Քի. եւ սէրն Այ. եւ հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ ընդ ձեզ ամենեսին։ Ամէն։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ։

Գլուխ Առաջներորդ։



1 ՊՕՂՈՍ ԱՌԱՔԵԱԼ ոչ ՚ի մարդկանէ, եւ ոչ ՚ի ձեռն մարդոյ՝ այլ ՚ի ձեռն Յի Քի, եւ Այ Հօր. որ յարոյց զնա ՚ի մեռելոց։ 2 Եւ որ ընդ իս են եղբարք ամենեքին, եկեղեցեացդ Գաղատացւոց։ 3 Շնորհք ընդ ձեզ եւ խաղաղութիւն յԱյ Հօրէ մերմէ՝ եւ ՚ի Տէ Յէ Քէ։ 4 Որ ետ զանձն իւր վս մեղաց մերոց. զի զմեզ փրկեսցէ յաշխարհէս աստի չարէ. ըստ կամացն Այ, եւ Հօր մերոյ։ 5 Որում փառք յաւիտեանս յաւիտենից ամէն։ 6 Զարմանամ, զի այդպէս վաղվաղակի փոփոխիք յայնմանէ՝ որ կոչեացն զձեզ ՚ի շնորհսն Քի յայլ աւետարան։ 7 Որ ոչ գոյ այլ. բայց եթէ իցեն ոմանք՝ որք խռովեցուցանիցեն զձեզ՝ եւ կամիցին շրջել զաւետարանն Քի։ 8 Այլ թէ մեք, կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր աւետարանեցաքն ձեզ՝ նզովեալ լիցի։ 9 Որպէս յառաջագոյն ասացաք՝ եւ արդ դարձեալ ասեմ, եթէ ոք աւետարանեսցէ ձեզ՝ աւելի քան զոր առէքն, նզովեալ լիցի։ 10 Արդ՝ մարդկան հաճոյ լինիցիմ, թէ Այ. կամ խնդրիցեմ մարդկան հաճոյ լինել. եթէ տակաւին մարդկան հաճոյ լինէի, ապա Քի ծառայ ոչ էի։ 11 Ցուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն, որ աւետարանեցաւ յինէն. զի ոչ է ըստ մարդոյ։ 12 Քանզի եւ ոչ ես ՚ի մարդոյ առի. եւ ոչ ուսայ յումեքէ. 13 այլ ՚ի յայտնութենէ Յի Քի։ Քանզի լուեալ իսկ է ձեր զիմ գնացսն, որ երբեմն ՚ի հրէութեանն անդ. զի անչափ հալածէի զեկեղեցին Այ. եւ աւեր հարկանէի զնա։ 14 Եւ յառաջադէմ էի ՚ի հրէութեանն՝ քան զբազում հասակակիցս իմ, որք յազգին իմում էին. առաւել նախանձախնդիր էի իմոց 15 հայրենի աւանդութեանցն։ Այլ յորժամ կամեցաւ Ած որ ընտրեաց զիս յորովայնէ մօր իմոյ. եւ կոչեաց ՚ի ձեռն 16 շնորհաց իւրոց, Յայտնել զորդին իւր ինեւ. զի աւետարանեցից զնա ՚ի հեթանոսս. անդէն վաղվաղակի ոչ հաւանեցայ մարմնոյ եւ արեան։ 17 Եւ ոչ ելի յԵմ, առ որ յառաջագոյն քան զիս առաքեալքն էին. այլ չոգայ յԱրաբիա. եւ դարձեալ դարձայ ՚ի Դամասկոս։ 18 Ապա յետ երից ամաց ելի յԵմ տեսանել զՊետրոս. եւ եղէ առ 19 նմա աւուրս հնգետասան։ Զայլ ոք յառաքելոց անտի ոչ տեսի, բայց միայն զՅակոբոս զեղբայր Տն։ 20 Եւ զոր գրեմս առ ձեզ, ահաւասիկ առաջի 21 Այ, զի ոչ ստեմ։ Ապա եկի ՚ի կողմանս Ասորւոց եւ Կիլիկեցւոց։ 22 Եւ անծանօթ էի երեսօք եկեղեցեացն՝ որք ՚ի Հրէաստանի էին ՚ի Քս։ 23 Բայց զի լսելով լուեալ էր. եթէ որ հալածէր զմեզ յայնժամ, արդ աւետարանէ զհաւատսն զոր երբեմն 24 խախտէր։ Եւ փառաւոր առնէին ինեւ զԱծ։

Գլ. Բ.

1 Ապա յետ ամաց չորեքտասանից միւսանգամ ելի յԵմ ընդ Բառնաբայ. առեալ ընդ իս եւ զՏիտոս։ 2 Եւ ելի ըստ յայտնութեանն. եւ ցուցի նոցա զաւետարանն՝ զոր քարոզէի

զեի 'ի հեթանոսս, առանձինն այնոցիկ՝ որք կարծեալքն էին․ գուցէ ընդունայն ինչ ընթացեալ իցեմ, կամ ընթանայցեմ ։ 3 *Այլ և ոչ տիտոս՝ որ ընդ իս 'ի հեթանոսաց էր, բռնադատեցաւ թլփատիլ ։ 4 *Այլ վ՟ն սպրդողաց սուտ եղբարց, որք սպրդեցան մտանել դիտել զազատութիւն մեր՝ զոր ունիմք 'ի Ք՟ս Յ՟ս ։ զի զմեզ ծառայեցուսցեն ։ 5 *Որոց և ոչ առժամանակ մի անսացաք հնազանդութեան ․ զի ճշմարտութի աւետարանին հաստատեսցի առ ձեզ ։ 6 *Բայց զկարծելոց եթէ իցեն ինչ (որպիսիք ոք երբեմն էին, չէ ինչ ինձ փոյթ ։ քանզի ‖ Ա՟ծ՝ ակն մարդկան ոչ առնու ։) զի ինձ կարծեալքն զայնպիսի ինչ ոչ զգացուցին ։ 7 *Այլ զնորին հակառակն՝ իբրև տեսին թէ հաւատացեալ է ինձ աւետարանն անթլփատութեան․ որպէս պետրոսի 'ի թլփատութեան ։ 8 (*Զի որ յաջողեացն պետրոսի յառաքելութի թլփատութեանն՝ յաջողեաց և ինձ 'ի հեթանոսս ։) 9 *Իբրև գիտացին զշնորհսն, որք տուեալք էին ինձ, յակոբոս՝ և կեփաս, և յովհաննէս․ որք կարծեալք սիւնքն էին․ ձեռն ետուն հաւանութեան ինձ և բառնաբայ ։ զի մեք 'ի հեթանոսս, և նոքա 'ի թլփատութեան ։ 10 *Բայց միայն զի զաղքատսն յիշեսցուք։ զոր և ես փութացայ զնոյն առնել ։

‖2.Օրէ. 10.17. Յօբ. 34.19. Իմաստ. 6. 8. Սիրաք. 35. 15. Գործ. 10. 34. Հռով. 2. 11. Եփես. 6. 9. Կողոս. 3. 25. 1.Պետ. 1. 17.

Գ. Գ.

11 *Այլ յորժամ եկն կեփաս յանտիոք՝ ընդդէմ դարձայ նորա․ քանզի գոդ իբրև ստգտեալ իմն էր ։ 12 *Վ՟անզի մինչև եկեալ էին ոմանք առ 'ի յակոբայ, ընդ հեթանոսս ուտէր անխտիր։ իսկ իբրև եկին, զատանէր՝ և որոշէր զանձն, երկուցեալ յայնցանէ՝ որք 'ի թլփատութեն անտի էին ։ 13 *Նա և կեղծաւորեցան ը՟ նմա՝ և այլ հրէայքն․ մինչև բառնաբաս անդամ խոնարհեցաւ 'ի նոցա կեղծաւորութիւն ։ 14 *Այլ իբրև տեսի թէ ոչ ուղիղ գնան 'ի ճշմարտութի աւետարանին, ասեմ ցկեփաս առաջի ամենեցուն․ եթէ դու որ հրէայդ ես՝ հեթանոսաբար՝ և ոչ հրէաբար կեաս․ զիարդ ստիպես հեթանոսաց լինել հրէաբէն ։ 15 *Զի մեք բուն հրէայք եմք․ և ոչ 'ի հեթանոսաց մեղաւորք ։ 16 *Զայս գիտեմք՝ եթէ ոչ արդարանայ մարդ 'ի գործոց օրինաց․ եթէ ոչ 'ի հաւատոյն Յ՟ի Ք՟ի ։ և մեք 'ի Ք՟ս Յ՟ս հաւատացաք, զի արդարասցուք 'ի հաւատոյն Ք՟ի, և ոչ 'ի գործոց օրինաց ։ ‖ զի 'ի գործոց օրինաց ոչ արդարասցի ամենայն մարմին ։ 17 *Իսկ եթէ մինչ խնդրիցեմք արդա-

‖Հռով. 3.20.

ճըլթ

րանալ 'ի Ք՟ս, և գտանիցիմք մեք մեղաւորք ։ ապաքէն Ք՟ս մեղաց պաշտօնեայ եղև ։ քա՛ւ լիցի ։ 18 *Զի եթէ զոր քակեցի՝ զնոյն միւսանգամ շինիցեմ ։ ապա յանցաւոր զանձն իմ ես ինձէն երևեցուցանեմ ։ 19 *Զի ես օրինօք, օրինացն մեռայ, զի Ա՟յ կեցից․ 20 և ընդ Ք՟ի 'ի խաչ ելեց ։ *Նա՛ կենդանի եմ այսուհետև՝ ոչ ես՝ այլ կենդանի է յիս Ք՟ս ։ այլ որ այժմս կեամ մարմնով՝ հաւատովք Որդւոյն Ա՟յ կեամ ։ որ սիրեացն զիս՝ և մատնեաց զանձն վասն իմ ։ 21 *Նա և ես ոչ անարգեմ զշնորհսն Ա՟յ ։ զի եթէ յօրինաց անտի է արդարութի, ապա Ք՟ս զուր մեռաւ ։

## Գ Լ ։ Գ ։

Գ. Զ.

1 Ո՛ անմիտ գաղատացիք, ո՞ նախանձ արար զձեզ ոչ հնազանդիլ ճշմարտութեան․ որոց գրեթէ առաջի աչաց Ք՟ս Յ՟ս գրեցաւ 'ի խաչ ելեալ ։ 2 *Զայս միայն կամիմ ուսանիլ 'ի ձէնջ․ 'ի գործոց օրինա՞ց զհոգին ընկալայք՝ 3 եթէ 'ի լրոյ հաւատոյ ։ *Այդչափ անմիտք էք․ սկսեալ հոգւով՝ և արդ մարմնո՞վ 4 վախճանիք ։ *Նա՛ այնչափ անցք անցին ընդ ձեզ զուր՝ եթէ իցէ զուր ։ 5 *Իսկ արդ՝ որ բաշխեաց 'ի ձեզ զհոգին՝ և յաջողեաց 'ի ձեզ զզօրութիւս․ 'ի գործոց օրինա՞ց է՝ թէ 'ի լրոյ հաւա 6 տոյ ։ *Որպ և գրեալ է ։ ‖ Հաւատաց աբրահամ յԱ՟ծ՝ և համարեցաւ նմա 7 յարդարութի ։ *Գիտիցէք արդեօք․ զի որք 'ի հաւատոյ անտի են, նոքա են 8 որդիք աբրահամու ։ *Յառաջագոյն գիտէր գիր, եթէ 'ի հաւատոյ անտի արդարացուցանէ Ա՟ծ զհեթանոսս, յառաջագոյն խոստացաւ աբրահամու․ ‖ թէ 'ի քեզ օրհնեսցին ա՟մ ազգք ։ 9 *Այսուհետև՝ որք 'ի հաւատոյ անտի են՝ օրհնին ընդ հաւատացելոյն աբրա 10 համու ։ *Զի որք միանգամ 'ի գործոց օրինացն են, ընդ անիծիւք են ։ քանզի գրեալ է․ ‖ թէ անիծեալ ա՟մ մարդ՝ որ ոչ կայցէ յամենեսեան գրեալսն 'ի գիրս օրինաց՝ առնել զն՟ա ։ 11 *Զի օրինօքն ոչ ոք արդարանայ առաջի Ա՟յ ։ այն յայտ իսկ է ։ ‖ զի արդարն՝ ասէ, 'ի հաւատոյ կեցցէ ։ 12 *Բայց օրէնքն չեն 'ի հաւատոյ, այլ ‖ որ արասցէ զայնոսիկ՝ կեցցէ 'ի նոսին ։ 13 *Ք՟ս գնեաց զմեզ յանիծից օրինացն, եղեալ վ՟ն մեր անէծք ։ զի գրեալ է․ ‖ թէ անիծեալ ա՟մ, որ կախեալ կայ 14 ցէ զփայտէ ։ *Զի 'ի հեթանոսս օրհնութի աբրահամու եղիցի 'ի Ք՟ս Յ՟ս․ զի մեք զաւետիս Հոգւոյն որբոյ առ-

‖Ծննդ. 15. 6. Հռով. 4. 3. Յակ. 2. 23. ‖Ծննդ. 12.3. Սիրաք. 44. 20. ‖2.Օրէ. 27.26. ‖Ամբակ. 2. 4. Հռով. 1. 17. ‖Ղևտ. 18. 5. ‖2.Օրէ. 21.23.

15 ցուք հաւատովք։ (*Ըստ մարդկութեան ասեմ) եղբարք։ Սակայն զմարդկան հաստատեալ կտակ ոչ ոք կարէ անարգել. և ոչ զայլ հրաման 'ի վերայ այնր տալ։ 16 *Իսկ աբրահամու խոստացան աւետիքն. և զաւակի նը։ և ոչ ասէ՝ զաւակաց իբրև զբազմաց. այլ իբրև զմիոյ։ Թէ՝ և զաւակի քում. որ է Քս։ 17 *Բայց զայս ասեմ, զկտակն յառաջագոյն հաստատեալ յԱյ, օրէնքն որք յետ չորեքհարիւր և երեսուն ամի եղան, ոչ կարեն խախտել առ 'ի խափանելոյ զաւետիսն։ 18 *Եթէ յօրինաց անտի է ժառանգութիւն. ապա ոչ ևս յաւետեացն։ բայց աբրահամու աւետեօք շնորհեաց Ած։ 19 *Իսկ զի՞նչ իցեն օրէնք։ յանցուածոց վասն յաւելան, մինչև եկեսցէ զաւակն. որում խոստացեալն էր՝ կարգեալ հրեշտակօք 'ի ձեռն միջնորդի։ 20 *Իսկ միջնորդ միոյ ուրուք ոչ է՝ բայց Ած մի է։

Եբրայ. 9. 17.

21 *Իսկ արդ օրէնքն հակառա՞կ ինչ իցեն աւետեացն Այ. քաւ լիցի։ զի եթէ տուեալ էին օրէնքն, որք կարող էին կենդանի առնել, ապա հաստատ յօրինաց անտի էր արդարութիւն։ 22 *Այլ փակեցին գիրք զամենեսին ընդ մեղօք։ զի աւետիքն 'ի հաւատոց անտի Յի Քի տացին հաւատացելոց։ 23 *Մինչչև հաւատքն եկեալ էին՝ ընդ օրինօքն փակեալ պահեաք 'ի հանդերձեալ հաւատոյն, որք յայտնելոց էին 'ի մեզ։ 24 *Ապա օրէնքն դաստիարակք եղեն մեզ 'ի Քս Յս. զի 'ի հաւատոցն արդարասցուք։ 25 *Այլ իբրև եկին հաւատքն, ոչ ևս ընդ դաստիարակաւ եմք։ 26 *Քանզի ամենեքին որդիք Այ էք հաւատովք 'ի Յս Քս։ 27 *Որք միանգամ 'ի Քս մկրտեցայք՝ զՔս զգեցեալ էք։ չիք խտիր։ 28 *Ոչ հրէի և ոչ հեթանոսի։ ոչ ծառայի, և ոչ ազատի։ ոչ արուի, և ոչ իգի։ զի ամենեքեան դուք մի էք 'ի Քս Յս։ 29 *Ապա եթէ դուք Քի էք՝ ուրեմն աբրահամու զաւակք էք՝ ըստ աւետեացն ժառանգք։

Հռով. 3. 9.

Հռով. 6. 3.

## ԳԼ. Դ.

ՆԿ

1 Այս ասեմ. ցորքան ժամանակս ժառանգն տղայ է՝ չէ ինչ աւելի քան զծառայն. թէպէտ և Տր իցէ ամենեցուն։ 2 *Այլ ընդ հազարապետօք է՝ և ընդ գաւառապետօք՝ մինչև 'ի ժամանակակէտ հօրն։ 3 *Նոյնպէս և մեք՝ մինչ տղայքն էաք՝ ընդ տարերբք աշխարհիս 'ի ծառայութեան կայաք։ 4 *Այլ իբրև եկն լրումն ժամանակին, առաքեաց Ած զՈրդի իւր՝ որ եղև 'ի կնոջէ. և եմուտ ընդ օրինօք։ 5 *Զի զնոսա՝ որք ընդ օրինօքն իցեն՝ գնեսցէ։ զի մեք զորդեգրութիւն ընկալցուք։ 6 *Եւ զի էք դուք որդիք, առաքեաց Ած զհոգի Որդւոյ իւրոյ 'ի սիրտս մեր՝ 7 որ աղաղակէ Աբբայ հայր։ *Այսու հետև չես ծառայ, այլ որդի. եթէ 8 որդի և ժառանգ Այ։ *Այլ յայնժամ մինչ ոչն գիտէիք զԱծ՝ ծառայէիք այնոցիկ՝ որք ոչն էին 'ի բնէ աստուածք։ 9 *Այլ այժմիկ ծանեայք զԱծ, մանաւանդ թէ ծանուցայք իսկ յԱյ. զիա՞րդ դառնայք միւսանգամ անդրէն 'ի տարերս տկարս և յաղքատս, որոց միւսանգամ զանձինս ծառայե- 10 ցուցանել կամիք։ *Զաւուրս խտրէք՝ և զամիսս՝ և զժամանակս՝ և զտարիս։ 11 *Երկնչիմ 'ի ձէնջ. գուցէ թէ 'ի զուր 12 ինչ վաստակեցայ 'ի ձեզ։ *Եղերո՛ւք իբրև զիս. քանզի և ես իբրև զձեզ էի։ եղբարք՝ աղաչեմ զձեզ. չի՛ք ինչ 13 ձեր մեղուցեալ առ իս։ *Գիտէք դուք՝ զի տկարութը մարմնոյ աւետարանեցի ձեզ զառաջինն։ և զփորձանսն որք 14 'ի մարմնի իմում էին, *Ոչ անարգեցիք՝ և ոչ անգոսնեցիք։ այլ իբրև զհրեշտակ Այ ընկալայք զիս՝ իբրև 15 զՔս Յս։ *Իսկ արդ ո՞ւր է երանութիւն ձեր։ վկայեմ ձեզ՝ եթէ հնար ինչ էր՝ զաչս ձեր հանէիք և տայիք ինձ։ 16 *Ապա՞րդ՝ զի թշնամի իմն եղէ ձեզ. զի 17 զստոյգն խօսեցայ։ *Այլ նախանձեցուցանեն զձեզ ոչ 'ի բարիս։ և արգելուլ կամին զձեզ՝ զի նց նախանձաւորք 18 լինիցիք։ *Բայց լաւ է նախանձաւոր լինիլ 'ի բարիս յամ ժամ։ և ոչ միայն յորժամ 'ի ձերում միջի իցեմ։

ՆԴ

19 *Որդեակք իմ, զորս դարձեալ վերստին երկնեմ, մինչև նկարեսցի Քս 'ի 20 ձեզ։ *Կամէի այժմ գալ առ ձեզ՝ և փոխել զբարբառ իմ. զի տարակուսեալ 21 եմ ես վս ձեր։ *Ասացէք ինձ, որք ընդ օրինօքն կամիք լինել՝ չիցէ ընթերցեալ ձեր զօրէնս։ 22 *Զի գրեալ է՝ թէ Աբրահամու երկու որդիք էին, մի յաղախնոյ անտի, 23 և մի յազատէն։ *Այլ որ յաղախնոյն էր՝ ըստ մարմնոյ ծնեալ էր։ և որ 24 յազատէն՝ ըստ աւետեաց։ *Որ է առակ օրինակի։ զի այս ինքն են երկու կտակարանք։ մի 'ի լեռնէ սինայ, 'ի ծառայութիւն ծնեալ՝ որ է հագար։ 25 *Քանզի սինա լեառն է յարաբիա՝ հաւասար է այսմ երէմի։ զի ծառայէ 26 որդւովք իւրովք հանդերձ։ *Այլ վերինն երէմ ազատ է՝ որ է մայր մեր ամե- 27 նեցուն։ *Զի գրեալ է։ Ուրախ լեր ամուլ՝ որ ոչ ծնանէիր՝ գոչեա, և աղա-

Ծնն. 16. 15.

Ծնն. 21. 2.

Եսայ. 54. 1.

ղակեա՛ որ ո՛չ երկնէիր. զի բազում են որդիք սկնդկին առաւել քան զա_ բամբւոյն ։ *‖ Այլ մեք եղբարք՝ ըստ 28 Իսահակայ աւետեացն որդիք եմք ։ *Այլ որպէս յայնժամ, որ ըստ մարմ 29 նոյն ծնեալ էր՝ հալածէր զայն՝ որ ըստ հոգւոյն, նոյնպէս և այժմ, *Այլ 30 զի՞նչ ասէ գիր ։ ‖ 'ի բաց հան զաղախինդ, և զորդի դորա. զի մի՛ ժառանգեսցէ որդի աղախնոյն՝ ընդ որդւոյն ազատի ։ *Ապա որոյ եղբարք՝ չեմք որ_ 31 դիք աղախնոյն, այլ ազատին ։ ազա_ տութեն, որով Քս զմեզ ազատեցոյց ։

‖ Հռոմ. 9. 8.
‖ Ծննդ. 21. 10.
ազատեցոյց։

ԳԼ: Ե:

Ե.Զ.

Արդ կացէք այսուհետև, և մի՛ 1 միւսանգամ ընդ լծով ծառայու թե մտանէք ։ *Ահաւասիկ ես պօղոս 2 ասեմ ձեզ ։ ‖ զի եթէ թլփատիք՝ Քս ինչ ձեզ ո՛չ օգնէ ։ *Վկայեմ ամ մար 3 դոյ՝ որ թլփատիցի՝ թէ պարտական է զամ օրէնսն կատարել ։ *Խափա 4 նեալ էք 'ի Քէ՝ որք օրինօքն արդարա նայք ։ և անկեալ էք 'ի շնորհաց անտի ։ *Զի մեք հոգւոյն՝ 'ի հաւատոյ յու_ 5 սոյն արդարութեան ակնունիմք ։ *Զի 'ի Քս Յս՝ ո՛չ թլփատութի 6 ինչ կարող է՝ և ո՛չ անթլփատութի. այլ հաւատք սիրով յաջողեալք ։ *Արդ ընթանայիք՝ ո՞ կասեցոյց 7 զձեզ ճշմարտութեն չհաւանիլ ։ *Զի այնք հրապոյրք՝ ո՛չ յայնմանէ 8 էին՝ որ կոչեացն զձեզ ։ *‖ Փոքր մի 9 խմոր զամենայն զանգուածն խմորէ ։ *Այլ ես յուսացեալ եմ 'ի ձեզ Տէ 10 թէ ո՛չ զայլ ազգ ինչ խորհիցիք ։ և որ խռովեցուցանէ զձեզ՝ կրեսցէ զդա_ տաստան՝ ո՛ ոք և իցէ ։ *Այլ ես եղ 11 բարք՝ եթէ զթլփատութի քարոզէի՝ ընդէ՞ր տակաւին հալածիմ ։ ապա ու_ րեմն խափանեալ իցէ գայթագղութի խաչին ։ *Երանի թէ մօտակտուրք 12 իսկ լինէին՝ որք զձեզն խռովեցուցա նեն ։ *Զի դուք յազատութի կոչե 13 ցեալ էք՝ եղբարք ։ միայն զի ազատու թի ձեր ո՛չ լինիցի 'ի պատճառս մարմ նոյ. այլ սիրով՝ ծառայեցէք միմեանց ։ *Զի ամ օրէնք 'ի մի բան կատարին ։ 14 ‖ սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո ։ *Ապա եթէ զմիմեանս խածատիցէք՝ 15 և ուտիցէք. զգո՛յշ լերուք՝ գուցէ 'ի միմեանց սատակիցիք ։ *Բայց զայս ասեմ ։ ‖ Հոգւով գնա_ 16 ցէք՝ և զցանկութի մարմնոյ մի կատա րէք ։ *Զի մարմին ցանկայ հակառակ 17 հոգւոյ ։ և հոգի հակառակ մարմ նոյ ։ և զի սոքա միմեանց հակառակք են, մի՛ զոր կամիցիքն՝ զայն առնիցէք ։

‖ Գործ. 15. 1.
‖ 1. Կորն. 5. 6.
‖ Ղեւտ. 19. 18.
‖ Մատ. 22. 39.
Զ.Կ.
Հռոմ. 13. 8.
‖ 1. Պետ. 2. 11.
Հչ Գ'

18 *Իսկ եթէ հոգւով վարիք. ապա չէք ընդ օրինօք ։ 19 *Զի յայտնի են գործք մարմնոյ ։ այս ինքն են, շնութի. պոռնկութի. պղծութիւն. գիճութի ։ 20 *Կռապաշտութի. կախարդութի. թշնամութի. հեռ. նախանձ. բար_ կութի. հակառակութիք. երկպառա 21 կութիք. հերձուածք ։ *Զարակնու թիք. սպանութիք. արբեցութիւնք. անառակութիւնք. և որինչ սոցին նմանք են ։ զոր յառաջագոյն իսկ ասեմ ձեզ, որպէս կանխաւն ասէի, թէ որք զայսպիսի ինչ գործեն՝ զարքայութին 22 Այ ո՛չ ժառանգեն ։ *Իսկ պտուղ հոգ ւոյն այս է ։ սէր. խնդութի. խաղա_ 23 ղութի. † երկայնմտութի ։ *Քաղցրու թի. բարութի. հաւատ. հանդար_ տութի. հեզութի. ժուժկալութի. ճնշումն. այսպիսեաց ատի օրէնքն 24 չէն հակառակ ։ *Իսկ որք Քի են, զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին՝ կարեօք և ցանկութեք հանդերձ ։ 25 *Եթէ կեամք հոգւով՝ ընդ հոգւոյն 26 և միաբանիցուք ։ *Մի՛ լիցուք ընա_ պարծք՝ միմեանց ձայն տալոյ՝ և ընդ միմեանս նախանձելոյ ։

† համբե_ րութի.

ԳԼ: Զ:

Զ.Գ.

1 Եղբարք, եթէ յանկարծ ըմբռնի ցի ոք 'ի ձէնջ յինչևիցէ յանցանս՝ դուք՝ որք հոգևորքդ էք՝ հաստատե_ ցէք զայնպիսին հոգւով հեզութե ։ զգո՛յշ լինիցիք անձանց՝ զի մի՛ և դուք 2 փորձիցիք ։ *Զմիմեանց բեռն բար_ ձէք՝ և այնպէս կատարեցէք միըստ 3 միոջէ զօրէնսն Քի ։ *Եթէ ոք հա_ մարիցի լինել ինչ՝ և չիցէ, զանձն իւր 4 խաբէ ։ *Զգործ իւր կշռեսցէ իւրա քանչիւրոք ։ և ապա անձին իւրում միայն պարծանս տացէ՝ և մի՛ առընկե 5 րաւն ։ *‖ Զի իւրաքանչիւրոք զիւր 6 բեռն բառնալոց է ։ *Հաղորդութի արասցէ աշակերտն վարդապետին՝ 7 յամ բարութիս ։ *Մի՛ խաբիք. Այ 8 ո՛չ արհամարհի ։ *Զի զորինչ սերմա նէ մարդ՝ զնոյն և հնձեսցէ ։ որ սեր_ մանէ 'ի մարմին իւր, 'ի մարմնոյ անտի հնձեսցէ զապականութի ։ և որ սեր մանէ 'ի հոգին՝ 'ի հոգւոյ անտի հըն_ 9 ձեսցէ զկեանսն յաւիտենից ։ *‖ Այլ զբարիս գործել մի՛ ձանձրասցուք. զի 'ի ժամանակի իւրում հնձեսցուք ա_ 10 ռանց լքանելոյ ։ *Այսուհետև մինչ դեռ ժամանակս 'ի ձեռս է՝ գործես_ ցուք զբարիս առ ամենեսեան, մանաւ անդ առ ընտանիսն հաւատոյ ։ 11 *Տեսէք՝ որպիսի գրով գրեցի ձեզ 12 իմով ձեռամբ ։ *Զի որք միանգամ

հաս_ րէցէ.
‖ 1. Կորն. 3. 8.
‖ 2. Թես. 3. 13.

կամին բարեմարդիկ լինել մարմնով, նոքա ստիպեն զձեզ թլփատել․ միայն զի մի՛ զհետ խաչին Քի՟ երթայցեն ։ *Քանզի որք թլփատեալքն իսկ են, 13 նոքա զօրէնսն ոչ պահեն ։ այլ կամին, զի դուք թլփատիջիք․ զի ձերով մարմնովդ պարծեսցին ։ *Այլ ինձ քաւ 14 լիցի պարծիլ՝ բայց միայն 'ի խաչն Տն՟ մերոյ Յի՟ Քի՟ ․ որով ինձ աշխարհս 'ի խաչ ելեալ է՝ և ես աշխարհի ։

15 *Զի 'ի Քս՟ Յս՟, ոչ թլփատութիւն ինչ է՝ և ոչ անթլփատութի ․ այլ նոր 16 արարած ։ *Եւ որք միանգամ այսմ կանոնի միաբան լինին, խաղաղութի 'ի վերայ նց՟, և ողորմութի և 'ի վ՟ 17 Իէլին Այ՟ ։ *Այսուհետեւ աշխատ ոք զիս մի՛ արասցէ ․ զի ես զխարանս Քի՟ 'ի մարմնի իմում կրեմ ։ 18 *Շնորհ Տն՟ մերոյ Յի՟ Քի՟ ընդ հոգւոյդ ձերում եղբարք ։ Ամէն ։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ
# ԵՓԵՍԱՑԻՍՆ ։

## Գլուխ Առաջներորդ ։

Ի․Կ


ՕՂՈՍ 1 ԱՌԱՔԵԱԼ Յի՟ Քի՟ կամօքն Այ՟ սրբոց որք են յԵփեսոս, և հաւատացելոց 'ի Քրիստոս Յս՟ ։ *Շնորհք ընդ 2 ձեզ և խաղաղութի յԱյ՟ Հօրէ մերմէ՝ և 'ի Տէ՟ Յէ՟ Քէ՟ ։ *‖Օրհնեալ է 3 Այ՟, և Հայր Տն՟ մերոյ Յի՟ Քի՟ ․ որ օրհնեաց զմեզ ամ՟ հոգեւոր օրհնութբ՟ յերկնաւորս 'ի Քս՟ ։ *Որպէս ընտրեաց 4 զմեզ նովաւ յառաջ քան զլինելն աշխարհի, լինել մեզ սուրբս և անարատս առաջի նր՟ սիրով ։ *†Յառաջագոյն 5 սահմանեաց զմեզ յորդեգրութի 'ի ձեռն Յի՟ Քի՟ 'ի նոյն ըստ հաճութե՟ կամաց իւրոց ։ *'Ի գովեստ 6 փառաց շնորհաց իւրոց ։ որով զուարճացոյց զմեզ սիրելեաւն ։ *Որով ու 7 նիմք զփրկութի 'ի ձեռն արեան նր՟, զթողութի մեղաց՝ ըստ մեծութեան շնորհաց իւրոց ։ *Որ առաւելաւ 'ի 8 մեզ ամ՟ իմաստութբ՟ և գիտութբ՟ ։ *Ցոյց մեզ զխորհուրդ կամաց իւր 9 ոց՝ ըստ հաճութե՟ իւրում, զոր յառաջագոյն եդ նովաւ ։ *'Ի տնտեսութե՟ 10 լրման ժամանակաց ։ բովանդակել զամ՟ 'ի Քս՟ ․ որ ինչ յերկինս՝ և որ ինչ յերկրի, 'ի նոյն ։ *Որով և վիճակե 11 ցաք յառաջագոյն հրաւիրեալք՝ ըստ յառաջադրութե՟ Այ՟ ․ որ զամ՟ յաջողէ ըստ խորհրդոց կամաց իւրոց ։ *Լինել մեզ 'ի գովեստ փառաց նորա՝ 12 յառաջագոյն յուսացելոցս 'ի Քս՟ ։

13 *Որով և դուք իբրև լուայք զբանն ճշմարտութե՟, (զաւետարանն փրկութե՟ ձերոյ,) որով և հաւատացեալ կնքեցայք հոգւոյն սրբոյ աւետեաց ։

14 *Որ է առհաւատչեայ ժառանգութե՟ մերոյ, 'ի փրկութի նուաճութե՟, 'ի գովեստ փառաց նորա ։

15 *Վս՟ այնորիկ և ես իբրև լուայ զհաւատսն ձեր՝ որ 'ի Տր՟ Յս՟ ․ և զսէրն որ 16 ընդ ամ՟ սուրբս ։ *Ոչ դադարեմ 'ի գոհանալոյ վս՟ ձեր՝ յիշել զձեզ յաղօթս ։

Ի․Դ

17 *Զի Այ՟, Տն՟ մերոյ Յի՟ Քի՟ Հայրն փառաց՝ տացէ ձեզ զհոգին իմաստութե՟ և յայտնութե՟, գիտութե՟ն իւրով ։

18 *Լուսաւոր առնել զաչս սրտից՝ առ 'ի գիտելոյ մեզ՝ զի՞նչ է յոյս կոչմանն նր՟ և զի՞նչ մեծութի փառաց ժառան 19 գութե՟ նորա 'ի սուրբս ։ *Եւ զի՞նչ է առաւելութի մեծութե՟ զօրութե՟ նր՟ 'ի մեզ հաւատացեալս ։ ‖ըստ յաջողութե՟ կարողութե՟ զօրութե՟ իւրոյ ։

20 *Զոր յաջողեաց 'ի Քս՟ ։ զի յարոյց զնա 'ի մեռելոց ․ և նստոյց ընդ աջմէ 21 իւրմէ յերկնաւորս, *'Ի վերայ ամ՟ իշխանութե՟՝ և պետութե՟ ․ և զօրութե՟՝ և Տրութե՟ ․ և ամ՟ անուան անուանելոյ, ոչ միայն յաշխարհիս յայսմիկ՝ 22 այլ և 'ի հանդերձելումն ։ *‖Եւ զամ՟ ինչ հնազանդ արար 'ի ներքոյ ոտից նր՟ ։ Եւ զնա եդ գլուխ 'ի վերայ ամ՟ 23 իրիք եկեղեցւոյ ։ *Որ է մարմին նորա և լրումն՝ որ զամ՟ յամի լնու ։

‖2. Կոր՟ 1. 3. 1. Պետ՟ 1. 3. † Որ ‖Կող՟ 3. 7 ‖Սղմ՟ 8. 8.

## Գլ: Բ ։

1 Եւ ‖դուք՝ որք մեռեալքն էիք 'ի 2 մեղս ձեր և յանցանս ։ *Յորս երբեմն գնայիք ըստ յաւիտենի աշ

‖Կող՟ 2. 13.

խար

խարհիս այսորիկ՝ ըստ իշխանին իշխանութեան օդոյս այսոյ՝ որ այժմս ընդմինեալ է յորդիսն ապստամբութեան։

3 * Յորս և մեք ամենեքեան շրջեաք երբեմն 'ի ցանկութիւնս մարմնոյ մերոյ։ և առնէաք զկամս մարմնոյ և զմտաց։ և էաք արդարև որդիք բարկութեան իբրև այլքն։

4 * Այլ Ած որ մեծն է ողորմութեամբ վն բազում սիրոյն իւրոյ՝ զոր սիրեաց զմեզ։ 5 * Մինչդեռ մեռեալք էաք 'ի մեղս մեր՝ կենդանիս արար զմեզ 'ի Քն, (քանզի շնորհօք ապրեցաք։) 6 * Ընդ նմին յարոյց՝ և ընդ նմին նստոյց յերկնաւորս 'ի Քն Յն։ 7 * Զի ցուցցէ 'ի յաւիտեանսն՝ որք գալոցն են՝ զառաւել մեծութիւն շնորհացն իւրոց՝ քաղցրութեամբ 'ի մեզ 'ի Քն Յն։

8 * Զի շնորհօք նորա էք փրկեալք 'ի ձեռն հաւատոց։ և այս ոչ 'ի ձէնջ, այլ Այ պարգև է։ 9 * Ոչ 'ի գործոց, զի մի ոք պարծեսցի։ 10 * Զի նր արարածք եմք՝ հաստատեալք 'ի Քն Յն 'ի գործս բարութեան, յորս յառաջագոյն պատրաստեաց Ած. զի 'ի նոյնս գնասցուք։ 11 * Վն որոյ և դուք յիշեցջիք՝ զի երբեմն հեթանոսք էիք մարմնով. որ կոչեցեալ էք անթլփատութիւն։ յանուանեալ թլփատութենէն անտի մարմնաւոր ձեռագործին։ 12 * Զի էիք 'ի ժամանակին յայնմիկ առանց Քի։ և օտարացեալք էիք յառաքինութենէն Իղի։ և տարագիրք յուխտից աւետեացն։ և զյոյս ինչ ոչ ունէիք՝ և անԱծք էիք յաշխարհի։ 13 * Իսկ այժմիկ 'ի ձեռն Յի Քի, դուք՝ որք երբեմն հեռաւորք էիք՝ մերձաւորք եղէք արեամբն Քի։ 14 * Զի նա է խաղաղութիւն մեր՝ որ արար զերկոսեանն մի. և զմիջնորմն ցանկոյն քակեաց՝ զթշնամութիւն 'ի մարմնի իւրում։

15 * Եւ զօրէն պատուիրանացն հրամանօքն խափանեաց։ զի զերկոսին հաստատեսցէ ինքեամբ 'ի մի նոր մարդ։ և արասցէ զխաղաղութիւն։ 16 * Եւ հաշտեցուսցէ զերկոսին միով մարմնով ընդ Այ խաչիւն իւրով։ քանզի սպան զթշնամութիւն յանձին իւրում։ 17 * Եւ եկն աւետարանեաց զխաղաղութիւն ձեզ հեռաւորաց՝ և զխաղաղութիւն մերձաւորաց։ 18 * ‖ Զի նովաւ ունիմք զմուծանութիւն երկոքեան՝ միով հոգւով առ հայր։

19 * Ապա այսուհետև ոչ էք օտարք և պանդուխտք. այլ քաղաքակիցք սրբոց՝ և ընտանիք Այ։ 20 * Շինեալք 'ի վերայ հիման առաքելոց և մարգարէից։ որոյ է գլուխ անկեանն Քս Յս։ 21 * Յորում ամ շինուածն յօդեալ և պատշաճեալ՝ աճէ 'ի տաճար սբ Տն։ 22 * Յորում և դուք ընդ նմին շինիք 'ի բնակութիւն Այ հոգւով։

## ԳԼ: Գ։

1 Վն այսորիկ ես պօղոս կապեալ Յի Քի վն ձեր հեթանոսաց։ 2 * Թէպէտ լուեալ իցէ ձեր զտնտեսութիւն շնորհացն Այ. որք տուեալք են ինձ 'ի ձեզ։ 3 * Զի ըստ յայտնութեանն ցուցաւ ինձ խորհուրդն։ որպէս յառաջագոյն գրեցի առ ձեզ սակաւուք։ 4 * Առ 'ի կարող լինելոյ ընթեռնուլ և 'ի միտ առնուլ զիմաստութիւն զիմ 'ի խորհրդեանն Քի։ 5 * Զի այլոց ազգաց ոչ ցուցաւ որդւոց մարդկան. որպ այժմ յայտնեցաւ սրբոց իւրոց առաքելոց և մարգարէից հոգւովն։ 6 * Լինել հեթանոսաց ժառանգակիցս և մարմնակիցս՝ և հաղորդս աւետեացն 'ի Քն Յն աւետարանաւն։ 7 * Որոյ եղէ ես սպասաւոր ըստ պարգևաց շնորհացն Այ՝ որք տուան ինձ ‖ ըստ յաջողութեան զօրութեան նորա։ 8 * ‖ Ինձ, որ տրուպս եմ ամ սրբոց՝ տուան շնորհքս այսոքիկ, 'ի հեթանոսս աւետարանել զանքննելին մեծութիւն Քի։ 9 * Եւ լուսաւոր առնել զամենեսին, թէ զինչ է տնտեսութիւն խորհրդոյն, որ ծածկեալն էր յամ յաւիտենից առ Այ՝ որ զամ ինչ արար։ 10 * Զի յայտնեսցի արդ իշխանութեանց և պետութեանց՝ որք յերկինս են 'ի ձեռն եկեղեցւոյ՝ բազմապատիկ իմաստութիւնն Այ։ 11 * Ըստ յառաջադրութեան յաւիտենիցն՝ զոր արար 'ի ձեռն Տն մերոյ Յի Քի։ 12 * Որով ունիմք զհամարձակութիւն և զմուծանութիւն յուսով 'ի ձեռն հաւատոյ նր։ 13 * Վն որոյ աղաչեմ մի ձանձրանալ 'ի նեղութիւնս մերում, որ վասն ձեր է։ 14 որ է փառք ձեր։ * Վն այսորիկ դնեմ զծունր առ հայր Տն մերոյ Յի Քի։ 15 * Ուստի ամ նահապետութիւն յերկինս և յերկրի անուանի։ 16 * Զի տացէ ձեզ ըստ մեծութեան փառաց իւրոց, հաստատիլ զօրութեամբ 'ի ձեռն հոգւոյն իւրոյ 'ի ներքին մարդն։ 17 * Բնակել Քի հաւատովք 'ի սիրտս ձեր։ սիրով արմատացեալք և հաստատեալք։ 18 * Զի կարողք լինիջիք հասանել ընդ ամ սրբս, զինչ է լայնութիւն, և երկայնութիւն. բարձրութիւն, և խորութիւն։ 19 * Ճանաչել զառաւելութիւն գիտութեան սիրոյն Քի. զի լցջիք ամ լրութեամբն Այ։ 20 * Այլ այնմ որ կարող է առաւել քան զամ ինչ առնել յաճախութեամբ՝ քան զոր խնդրեմքն և իմանամք։ ըստ զօրութեանն՝ որ յաջողեալ է 'ի

‖ Հռով. 5. 2.

‖ Ա. 19. ‖ Ա. Կորն. 15. 9.

'ի մեզ։ 21 Նմա փառք յեկեղեցւոջ, և 'ի Քրիստոս Յիսուս, յամ ազգս յաւիտենից յաւիտեանս։ Ամէն։

## ԳԼ. Դ.

1 Արդ' աղաչեմ զձեզ ես' որ կապեալս եմ 'ի Տէր. արժանի գնալ կոչմանն, յոր կոչեցայք։ 2 Ամենայն խոնարհութեամբ և հեզութեամբ, և երկայնմտութեամբ' անսալ միմեանց սիրով։ 3 Փութալ պահել զմիաբանութիւն Հոգւոյն յօդիւ խաղաղութեան։ 4 Մի մարմին և մի Հոգի. որպէս և կոչեցայք 'ի մի յոյս կոչման ձերոյ։ 5 Մի Տէր, մի հաւատ, մի մկրտութիւն։ 6 Մի Աստուած, և Հայր ամենեցուն. որ 'ի վերայ ամենայնի և ընդ ամենեսին' և յամենեսին 'ի մեզ։ 7 Այլ իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ տուեալ է շնորհ ըստ չափու պարգևացն Քրիստոսի։ 8 Վասն որոյ ասէ. Ել 'ի բարձունս' գերեաց զգերութիւն. և ետ պարգևս մարդկան։ 9 Որ ելն, զի՞նչ է, եթէ ոչ' զի էջ նախ 'ի ստորինս կողմն երկրի։ 10 Որ էջն, նոյն է' և որ ելն 'ի վերոյ քան զամենայն երկինս. զի լցցէ զամենայն։ 11 Եւ նա ետ զոմանս առաքեալս. զոմանս մարգարէս. զոմանս աւետարանիչս. զոմանս հովիւս, և վարդապետս։ 12 Առ 'ի հաստատութիւն սրբոց, 'ի գործ պաշտաման, 'ի շինուած մարմնոյն Քրիստոսի։ 13 Մինչև հասցուք ամենեքեան 'ի մի միաբանութիւն հաւատոյ և գիտութեան Որդւոյն Աստուծոյ. յայր կատարեալ 'ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի։ 14 Զի մի յայսմհետէ իցեմք տղայք խռովեալք' և տատանեալք յամենայն հողմոյ վարդապետութեան, խաբէութեամբ մարդկան. խորամանկութեամբ 'ի խաբէութիւն մոլորութեան։ 15 Այլ ճշմարտեալք սիրով' աճեսցուք 'ի նա ամենայնիւ, որ է գլուխ Քրիստոս։ 16 Ուստի ամենայն մարմինն յօդեալ և պատշաճեալ ամենայն խաղալեօք տարբերութեան' ըստ իւրաքանչիւրոյ մասին' զաճումն մարմնոյ գործէ' 'ի շինուած անձին իւրոյ սիրով։ 17 Արդ' զայս ասեմ, և ուխտեմ 'ի Տէր. մի ևս ձեզ գնալ որպէս և այլք հեթանոսք գնան' ունայնութեամբ մտաց իւրեանց։ 18 Որոց խաւարեալք են սիրտք' և օտարացեալք են 'ի կենաց անտի Աստուծոյ' վասն տգիտութեանն' որ է 'ի նոսա, վասն կուրութեան սրտից իւրեանց։ 19 Որք զանձանց իւրեանց զյոյսն հատին. և մատնեցին զանձինս գիճութեան. 'ի գործս ամենայն պղծութեան ագահութեամբ։ 20 Այլ դուք ոչ այսպէս ուսայք զՔրիստոս։ 21 Եթէ պէտ և լուայք զնմանէ և նովաւ ուսայք' որպէս է ճշմարտութիւնն Յիսուսի։

22 Ի բաց մերկանալ 'ի ձէնջ ըստ առաջնոյ գնացիցն զմարդն հին' զապականեալն ցանկութեամբք խաբէութեան։ 23 Եւ նորոգիլ հոգւով մտաց ձերոց։ 24 Եւ զգենուլ զնոր մարդն' որ ըստ Աստուծոյ հաստատեալ է' արդարութեամբ և սրբութեամբ ճշմարտութեան։ 25 Վասն որոյ 'ի բաց ընկեցէք զստութիւն. խօսեցարուք զճշմարտութիւն իւրաքանչիւր ընդ ընկերի իւրում. զի եմք միմեանց անդամք։ 26 Բարկանայք' և մի մեղանչէք. արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ։ 27 Եւ մի տայք տեղի սատանայի։ 28 Որ գողանայր, մի ևս գողասցի' այլ մանաւանդ վաստակեսցէ' գործել ձեռօք իւրովք զբարիս. զի բաւական իցէ տալ' ում պիտոյ իցէ։ 29 Ամենայն բան տգեղ 'ի բերանոյ ձերմէ մի ելցէ. այլ որ ինչ բարի է 'ի շինուած պիտոյից, զի տացէ շնորհս այնոցիկ, որք լսենն։ 30 Եւ մի տրտմեցուցանէք զՀոգին սուրբ Աստուծոյ, որով կնքեցայք յաւուրն փրկութեան։ 31 Ամենայն դառնութիւն' և բարկութիւն' և սրտմտութիւն' և աղաղակ' և հայհոյութիւն բարձցի 'ի ձէնջ ամենայն չարութեամբ հանդերձ։ 32 Լերուք ընդ միմեանս քաղցունք' գթածք. շնորհել միմեանց. որպէս և Աստուած Քրիստոսիւ շնորհեաց մեզ։

## ԳԼ. Ե.

1 Եղերուք նմանօղք Աստուծոյ, իբրև որդիք սիրելիք։ 2 Եւ գնացէք սիրով' որպէս և Քրիստոս սիրեաց զմեզ. և մատնեաց զանձն իւր վասն մեր' պատարագ և զենումն Աստուծոյ 'ի հոտ անուշից։ 3 Այլ պոռնկութիւն, և ամենայն պղծութիւն, կամ ագահութիւն, և անուանեսցի մի 'ի միջի ձերում. որպէս և վայել է սրբոց։ 4 Եւ զազրութիւն կամ խօսք յիմարութեան, կամ խեղկատակութիւն' որ ոչ վայել է. այլ մանաւանդ գոհութիւն։ 5 Զայս տեղեկացեալ գիտասջիք թէ ամենայն պոռնիկ' կամ պիղծ' կամ ագահ, որ է կռապաշտ' ոչ ունի զժառանգութիւն յարքայութեանն Քրիստոսի և Աստուծոյ։ 6 Մի ոք զձեզ խաբեսցէ բանիւք սնոտեօք. զի վասն այսորիկ իսկ գայ բարկութիւն Աստուծոյ 'ի վերայ որդւոցն անհաւանութեան։ 7 Մի այսուհետև լինիք բաժանորդք նոցա։ 8 Զի թէպէտ և երբեմն էիք խաւարք. այլ արդ լոյս էք 'ի Տէր. իբրև զորդիս լուսոյ գնացէք։ 9 Զի պտուղ լուսոյ ամենայն բարութեամբ է' և արդարութեամբ և ճշմարտութեամբ. 10 Փորձեցէք' զինչ է հաճոյ Տեառն։ 11 Եւ մի կցորդք լինիք անպտուղ գործոցն խաւարի. այլ մանաւանդ յանդիմանեցէք։ 12 Զի որ 'ի ծա

ծուկ

ծուկ ինչ գործի 'ի նոսա՝ զայն և խօսել աղտեղի է : * Այլ ա՛մ ինչ յանդիմանեալ՝ 'ի լուսոյ յայտնի լինի: զի ա՛մ ինչ որ յայտնի է՝ լոյս է : 14 * Վա որոյ և ասէ: արի, որ ննջեսդ. և կանգնեաց 'ի մեռելոց՝ և լուսատու լիցի քեզ Քս :

15 *Տեսջի՛ք՝ ո՛պ ճշմարտիւ գնայցէք : մի՛ իբրև անիմաստք : 16 * Այլ իբրև իմաստունք : գնեցէ՛ք զժամանակս՝ զի աւուրքս չարու են : 17 *Վա այնորիկ մի՛ լինիք անմիտք՝ այլ իմացարո՛ւք զինչ կա՛մք են Տն: 18 * Եւ մի՛ արբենայք գինւով, յորում զեղխութի է. այլ մանաւանդ լցարո՛ւք Հոգւով սրբով: 19 * Խօսել 'ի սիրտս ձեր սաղմոսիւք, և օրհնութե՛ք՝ և երգօք հոգևորօք: երգել և սաղմոս ասել 'ի սիրտս ձեր Տն: 20 *Գոհացարո՛ւք յա՛մ ժամ՝ 'ի վր ա՛մի, յանուն Տն մերոյ Յի Քի, Հօրն և Այ : 21 * Հնազանդ լերուք միմեանց երկիւղիւն Քի : 22 * Կանայք իւրեանց արանց հնազանդք լինիցին իբրև Տն : 23 * Զի այր է գլուխ կնոջ՝ ո՛պ և Քս գլուխ է եկեղեցւոյ . և ինքն է փրկիչ մարմնոյ : 24 *Այլ ո՛պ եկեղեցին հնազանդ լինի Քի . նոյնպ և կանայք իւրեանց արանց յա՛մի : 25 * Արք՝ սիրեցէք զկանայս ձեր . ո՛պ և Քս սիրեաց զեկեղեցի . և զանձն իւր մատնեաց վր նր : 26 * Զի զնա սրբեսցէ սրբութբ աւազանին բանիւ : 27 * Զի կացուսցէ ինքն իւր յանդիմանի փառաւոր զեկեղեցի՝ զի մի՛ ունիցի ինչ զարատ՝ կամ զաղտեղութի. կամ զայլ ինչ յայնպիսեաց. այլ զի իցէ սբ, և անարատ : 28 * Նոյնպ պարտին և արք սիրել զիւրեանց կանայս՝ իբրև զիւրեանց մարմինս : որ սիրէ զկին իւր՝ զանձն իւր սիրէ : 29 * Զի ո՛չ ոք երբէք ատեաց զանձն իւր՝ այլ սնուցանէ, և դարմանէ զնա . ո՛պ և Քս զեկեղեցի : 30 * Զի անդամք եմք մարմնոյ նր. 'ի մարմնոյ նր՝ և յոսկերաց նր : 31 * Վա այսորիկ թողցէ այր զհայր, և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւրոյ՝ և եղիցին երկոքին 'ի մարմին մի : 32 * Խորհուրդս այս մեծ է՝ բայց ես ասեմ 'ի Քս և յեկեղեցի : 33 * Այլ և դուք նոյնպ մի ըստ միոջէ . զի իւրաքանչիւրոք զիւր կին այնպ սիրեսցէ իբրև զիւր անձն . և կին երկնչիցի յառնէ իւրմէ :

## ԳԼ : Զ:

1 Որդի՛ք՝ հնազանդ լերուք ծնողաց ձերոց 'ի Տր : զի այն է արժանն: 2 * Պատուեա՛ զհայր քո և զմայր: որ է առաջին պատուիրան յաւետիսն : 3 * Զի քեզ բարի եղիցի . և երկայնակեաց լինիցիս 'ի վր երկրի: 4 * Հա՛րք՝ մի՛ զայրացուցանէք զորդիս ձեր՝ այլ սնուցանիջի՛ք զնս խրատու և ուսմամբ Տն:

5 * Ծառայք՝ հնազանդ լերուք տերանց ձերոց մարմնաւորաց, ահիւ և դողութբ, և միամտութբ սրտից ձերոց, ո՛պ և Քի : 6 * Մի՛ առ ականէ ծառայել իբրև մարդահաճոյք: այլ իբրև ծառայք Քի առնել զկամս Այ : 7 * Սրտի մտօք ծառայել՝ իբրև Տն . և մի՛ իբրև մարդկան : 8 * Գիտասջի՛ք՝ թէ իւրաքանչիւր ոք որինչ առնէ զբարին, զնոյն ընդունի և 'ի Տե՛ թէ ծառայ՝ և թէ ազատ: 9 * Եւ դուք տեա՛րք՝ զնոյն առնիջի՛ք առ նոսա : ներելով առնել զսպառնալիս : գիտասջի՛ք թէ և նց և ձեր Տր գոյ յերկինս : և ակնառութի ո՛չ գոյ առաջի նր : 10 * Այսուհետև զօրացարո՛ւք Տր, և կարողութբ զօրութե նորա : 11 * Եւ զգեցարո՛ւք զսպառազինութին Այ. զի կարօղք լինիջի՛ք կալ ընդդէմ հնարից սատանայի : 12 * Զի ո՛չ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ արեան: այլ ընդ իշխանութիս, և ընդ պետութիս, ընդ աշխարհակալս խաւարիս այսորիկ՝ ընդ այսս չարութե՝ որք են 'ի ներքոյ երկնից : 13 * Վա այնորիկ առէք զսպառազինութին Այ. զի կարօղք լինիցիք 'ի դիմի հարկանել չարին յաւուրն չարութե : 14 * Եւ իբրև զա՛մ ինչ կատարիցէք, հաստատո՛ւն կացէք: զտեղի կալջի՛ք պնտեալ զմէջս ձեր ճշմարտութբ. և զգեցեալ զզրահն արդարութե : 15 * Եւ ագուցեալ զոտս պատրաստութբ աւետարանին խաղաղութե: 16 * Եւ 'ի վր ա՛մի առէ՛ք զվահանն հաւատոյ . որով կարօղք լինիջի՛ք զա՛մ նետս մուխս չարին շիջուցանել : 17 * Եւ առէ՛ք զսաղաւարտն փրկութե . և զսուսեր Հոգւոյն (որ է բանն Այ): 18 * Ա՛մ աղօթիւք և խնդրուածօք, աղօթս առնել յա՛մ ժամանակի Հոգւով : և 'ի նոյն տքնիջի՛ք ա՛մ ժուժկալութբ՝ և խնդրուածօք վր ա՛մ սրբոց : 19 * Եւ վասն իմ. զի ինձ տացի բան 'ի բանալ բերանոյ իմոյ, համարձակութբ ցուցանել զխորհուրդ աւետարանին : 20 * Վա որոյ պատգամաւորիմ կապանօքս . զի նովին համարձակեցայց, ո՛պ և պարտ իցէ ինձ խօսել: 21 * Բայց զի գիտիցէք և դուք զինէն , զինչ գործեմ. զա՛մ ինչ ցուցցէ ձեզ տիքիկոս սիրելի եղբայր՝ և հաւատարիմ պաշտօնեայ 'ի Տր : 22 * Զոր առաքեցի առ ձեզ դմին իրի: զի գիտասջի՛ք դուք զմէնջ . և մխիթարեսցէ զսիրտս ձեր: 23 * Խաղաղութի ընդ եղբարս . և սէր հաւատովք հանդերձ յԱյ Հօրէ՝ և 'ի Տէ Յէ Քէ : 24 * Շնորհք ընդ ամենեսին՝ ոյք սիրեն զՏէր մեր Յս Քս անեղծութբ: Ամէն :

ԹՍՄԳ . Թ.

Margin references: Բ. Կ; Կողոս. 4. 5.; Հռոմ. 12. 2.; 1. Թես. 4. 3.; Ծննդ. 3. 16.; Կողոս. 3. 18.; 1. Պետ. 3. 1.; 1. Կորն. 11. 3.; Կողոս. 3. 19.; Ծննդ. 2. 24.; Մատթ. 19. 5.; Մարկ. 10. 7.; 1. Կորն. 6. 16.; Բ. Գ; Ելից. 20. 12.; 2. Օրէն. 5. 16.; Սիրաք. 3. 9.; Մատթ. 15. 4.; Մարկ. 7. 10.; Կողոս. 3. 20.; Կողոս. 3. 22.; Տիտոս. 2. 9.; 1. Պետ. 2. 18.; 2. Օրէն. 10. 17.; 2. Մնաց. 19. 7.; Յոբ. 34. 19.; Իմաստ. 6. 8.; Սիրաք. 35. 15.; Գործ. 10. 34.; Հռոմ. 2. 11.; Կողոս. 3. 25.; 1. Պետ. 1. 17.; Եսայ. 59. 17.; 1. Թես. 5. 8.; Կողոս. 4. 2.; 2. Թես. 3. 1.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ
## ՓԻԼԻՊՊԵՑԻՍՆ

Գլուխ Առաջներորդ։

Թ. Կ



ՕՂՈՍ ԵՒ ՏԻՄՈԹէոս ծառայք Յի Քի ամ սրբոց 'ի Քս Յս, որք են 'ի կողմանս փիլիպպեցւոց, եպիսկոպոսակցօք և սարկաւագօք։ 2 *Շնորհք ընդ ձեզ և խաղաղութի յԱյ Հօրէ մերմէ՝ և 'ի Տէ Յէ Քէ։ 3 *Գոհանամ զԱյ իմոյ 'ի վերայ ամ յիշատակաց ձերոց։ 4 *Յամ ժամ, յամ խնդրուածս իմ, վասն ձեր ամենեցուն առնել աղօթս ('ի Վերայ) 5 խնդութբ։ *Վասն հաղորդութե ձերոյ ընդ աւետարանին, յօրէ յառաջնմէ մինչև ցայժմ։ 6 *Վստահ եմ յայդ, թէ որ սկսաւ 'ի ձեզ զգործս բարեաց՝ կատարեսցէ մինչև յօրն Յի Քի։ 7 *Որպ իրաւ իսկ թուի ինձ խորհել զայս վս ձեր ամենեցուն. վս ունելոյ ինձ զձեզ 'ի սրտի, 'ի կապանս իմ և 'ի պատասխանատուութե իմում. և 'ի հաստատութե աւետարանին, կցորդս ինձ շնորհաց զձեզ ամենեսին լինել։ 8 *Վկայ է ինձ Այ, որպ անձկացեալ եմ առ ձեզ ամենեսին գթովքն Յի Քի։ 9 *Եւ զայն աղօթս առնեմ. զի սէրն ձեր ևս քան զևս առաւել լիցի 'ի գիտութե, և յամ իմաստութեան։ 10 *Ընտրել ձեզ զլաւն՝ զի իցէք հաստատունք և առանց գայթագղութե յաւուրն Քի։ 11 *Լցեալք պտղով արդարութե 'ի ձեռն Յի Քի, 'ի փառս՝ և 'ի գովեստ Այ։

Թ. Գ

12 *Կամիմ թէ գիտիցէք եղբարք. զի որինչ վս իմ էր, ևս քան զևս 'ի յառաջադիմութի աւետարանին եկն։ 13 *Մինչև կապանաց իմոց յայտնի լինել 'ի Քս յամի հրապարակիս, և առ այլս ամենեսին։ 14 *Եւ առ բազումս եղբարս 'ի Տր. որք վստահք են կապանօքս իմովք՝ առաւել ևս համարձակեալք՝ առանց երկիւղի զբանն Այ խօսել։ 15 *Ոմանք առ նախանձու և հակառակութե. և ոմանք մտադիւրութբ 16 իսկ զՔս քարոզեն։ *Եւ ոմանք 'ի սիրոյ. քանզի գիտեն՝ եթէ 'ի պատասխանատուութի աւետարանին կամ։ 17 *Եւ ոմանք առ հեստութեան զՔս պատմեն, այլ ոչ սրբութբ. քանզի համարին նեղութիս յարուցանել 'ի 18 վերայ կապանաց իմոց։ *Բայց այս զինչ է. որով օրինակաւ և իցէ, եթէ պատճառանօք՝ և եթէ ճշմարտութբ՝ Քս պատմի. և ընդ այս խնդամ՝ այլև 19 ուրախ ևս եղէց։ *Զի գիտեմ, եթէ այս պահի ինձ 'ի փրկութի, 'ի ձերոց խնդրուածոց՝ և 'ի պարգևաց հոգւոյն 20 Յի Քի։ *Ըստ ակնկալութե, և յուսոյն իմոյ. զի մի իւիք յամօթ եղէց. այլ ամ համարձակութբ որպ և յամ ժամ, և այժմ մեծասցի Քս 'ի մարմնի իմում, եթէ կենօք՝ և եթէ մահու։ 21 *Զի ինձ կեանք Քս է, և մեռանիլ 22 շահ։ *Ապա եթէ կեանքս մարմնոյ այս ինձ պտուղ գործոյ է. և զինչ 23 ընտրեցից՝ ոչ գիտեմ։ *Նեղեալ եմ յերկոցունց. զցանկալն ելանել և ը Քի լինել՝ առաւել լաւ համարիմ։ 24 *Եւ կալ մնալ աստէն 'ի մարմնի, կա25 րևոր ևս վս ձեր։ *Եւ զայս յուսացեալ գիտեմ, եթէ կացից՝ և մնացից ամենեցուն ձեզ. 'ի ձեր զարգանալ՝ և 26 ուրախ լինել 'ի հաւատս։ *Զի պարծանք ձեր առաւել լիցին 'ի Քս Յս ինև, 'ի միւսանգամ գալստեան իմում 27 առ ձեզ։ *‖Միայն թէ արժանի աւետարանին Քի գնայցէք. զի թէ գայցեմ, և տեսանիցեմ զձեզ. և եթէ հեռի իցեմ, և լսիցեմ զձէնջ, զի հաստատուն կայցէք 'ի մի հոգի, և միով շնչով նահատակիցիք 'ի հաւատս աւետարա28 նին։ *Եւ մի զանգիտիցէք, և մի իւիք 'ի հակառակորդաց անտի՝ որ է նոցա հանդէս կորստեան. և ձերոյ փր29 կութե։ *Եւ այդ յԱյ է՝ որ ձեզ շնորհեցաւ վասն Քի, ոչ միայն 'ի նա հաւատալ՝ այլ և վասն նր չարչարիլ։ 30 *Զնոյն պատերազմ ունել՝ զոր յինէն տեսէք՝ և այժմ լսէք յինէն։

‖Եփե 4. 1. Կողո 1. 10. 1.Թես 2.12.

## Գլ: Բ։

1 Արդ՝ եթէ մխիթարութիւն ինչ իցէ ՚ի Ք՟ս, եթէ սփոփութիւն սիրոյ՝ եթէ հաղորդութիւն հոգւոյ, եթէ գթութիւն և ողորմութիւն։ 2 *Լցէք զխնդութիւն իմ, զի զնոյն խորհիջիք՝ զնոյն սէր յանձին ունիջիք․ համաշունչք՝ միախորհուրդք։ 3 *Մի ինչ ըստ գրգռութեան, և մի ինչ ըստ սնապարծութեան․ այլ խոնարհութեամբ զմիմեանս լաւ համարիլ առաւել քան զանձինս։ 4 *Մի զանձանց և եթ գիտել՝ այլ իւրաքանչիւրոք զընկերին։ 5 *Զայն խորհեսցի իւրաքանչիւրոք ՚ի ձէնջ, որ և ՚ի Ք՟ս Յ՟ս։ 6 *Որ ՚ի կերպարանս Ա՟յ էր, ոչինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Ա՟յ։ 7 *Այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ, ՚ի նմանութիւն մարդկան եղեալ՝ և կերպարանօք գտեալ իբրև զմարդ։ 8 *‖Խոնարհեցոյց զանձն, լեալ հնազանդ մահու չափ՝ և մահու խաչի։ 9 *Վ՟ս որոյ և Ա՟ծ զնա առաւել բարձրացոյց․ և շնորհեաց նմա անուն՝ որ ՚ի վեր է քան զամ՟ անուն։ 10 *‖Զի յանուն Յ՟ի Ք՟ի ամ՟ ծունր կրկնեսցի, երկնաւորաց՝ և երկրաւորաց՝ և սանդարամետականաց։ 11 *Եւ ամ՟ լեզու խոստովան լիցի, թէ Տ՟ր Յ՟ս Ք՟ս է ՚ի փառս Ա՟յ հօր։ 12 *Այսուհետև սիրելիք իմ, (որպէս յամ՟ հնազանդեցայք) մի միայն ՚ի գալստեան իմում, այլ առաւել և այժմ, յորժամ հեռի եմ ՚ի ձէնջ՝ ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործեցէք։ 13 *Զի Ա՟ծ է՝ որ յաջողէ ՚ի ձեզ զկամելն, և զառնելն վասն հաճութեան։ 14 *‖Զամ՟ ինչ գործեցէք առանց տրտնջելոյ և քրթմնջելոյ։ 15 *Զի եղիջիք ամբիծք և անարատք որդիք Ա՟յ, անմեղք ՚ի մէջ կամակոր և խեղաթիւր ազգին․ յորոց միջի երևիցիք իբրև լուսաւորք յաշխարհի։ 16 *Զբանն կենաց ունիլ յանձինս՝ ՚ի պարծանս ինձ յաւուրն Ք՟ի․ զի ոչ ընդունայն ինչ ընթացայ՝ և ոչ ընդունայն վաստակեցայ։ 17 *Այլ թէպէտ և նուիրիմ ՚ի վերայ պատարագի և պաշտաման հաւատոյ ձերոյ։ 18 *Խնդամ՝ և ուրախակից եմ ամենեցուն ձերում նոյնպէս և դուք խնդացէք՝ և ուրախակից եղերուք ինձ։ 19 *Բայց յուսամ ՚ի Տ՟ր Յ՟ս, ‖զտիմոթէոս վաղվաղակի արձակել առ ձեզ․ զի և ինձ սրտի դիւր լինիցի, յորժամ գիտիցեմ ինչ զձէնջ։ 20 *Զի ոչ զոք ունիմ համաշունչ՝ եթէ ընտանեբար հոգայցէ վ՟ս ձեր։ 21 *‖Զի ամենեքին

զա

‖Եբրայ. 2. 9.
‖Եսայ. 45. 24. Հռոմ. 14. 11.
‖Ա.Պետ. 4. 9.
‖Գործ. 16. 1.
‖Ա.Կորն. 13.5.

զանձանց խնդրեն, և ոչ զՅ՟ի Ք՟ի։ 22 *Բայց զփորձ նր՟ա գիտացէք և դուք․ զի իբրև որդի հօր ծառայեաց ընդ իս յաւետարանին։ 23 *Արդ՝ զսա ակնունիմ արձակել՝ որպէս նոյնհետայն զանձնէ ստուգեցից։ 24 *Այլ յուսամ ՚ի Տէր՝ թէ և ես իսկ ընդ հուպ եկից։ 25 *Բայց լաւ համարեցայ զեպափրոդիտոս զեղբայր՝ և զգործակից և զզինուորակից, զձեր առաքեալ՝ և զպաշտօնեայ իմոց պիտոյից՝ առաքել առ ձեզ։ 26 *Քանզի և ինքն իսկ յոյժ անձկացեալ է տեսանել զամենեսին զձեզ․ և հոգայր՝ զի ձեր լուեալ էր թէ խօթացաւ։ 27 *Եւ արդարև խօթացաւ մինչև ՚ի մահ․ այլ Ա՟ծ ողորմեցաւ նմա․ ոչ նմա միայն, այլև ինձ․ զի մի՛ զտրտմութիւն ՚ի վերայ տրտմութեան կրեցեմ։ 28 *Արդ՝ փութապէս յղեցի զնա՝ զի տեսեալ զնա միւսանգամ ուրախ լինիցիք․ և ես առանց տրտմութեան եղէց։ 29 *Ընկալջիք զնա ՚ի Տ՟ր ամ՟ խնդութեամբ՝ և զայնպիսիսն սա պատուականս ունիջիք։ 30 *Զի վասն գործոյ Տ՟ն մինչև ՚ի մահ մերձեցաւ, դուն գործեալ ոգւովք չափ․ զի լցցէ զձեր պակասութիւն իմոյ սպասաւորութեան։

## Գլ: Գ։

1 Այսուհետև եղբարք իմ, ուրախ լերուք ՚ի Տ՟ր։ զնոյն գրել առ ձեզ ինձ ոչինչ դանդաղելի է․ և ձեզ կարի զգուշալի։ 2 *Զգո՛յշ եղերուք ՚ի շանց անտի։ զգո՛յշ եղերուք ՚ի չար մշակաց անտի։ զգո՛յշ եղերուք ՚ի կրճատութենէ անտի։ 3 *Զի թլփատութիւն մեք եմք, որք հոգւով զԱ՟ծ պաշտեմք։ և պարծիմք ՚ի Ք՟ս Յ՟ս, և ոչ ՚ի մարմին պանծացեալ եմք։ 4 *Թէպէտ և ես իսկ զնոյն վստահութիւն ունիմ ՚ի մարմնի։ եթէ ոք համարիցի այլ ազգ վստահ լինել ՚ի մարմին, առաւել ևս ես։ 5 *Թլփատութեամբ ութօրեայ․ յազգէ Իղի․ ՚ի ցեղէ բենիամենի․ եբրայեցի յեբրայեցւոց։ ‖ըստ օրինացն փարիսեցի։ 6 *Ըստ նախանձայոյզն լինելոյ հալածէի զեկեղեցին Ա՟յ։ ըստ արդարութեան օրինացն լեալ անարատ։ 7 *Այլ որ ինչ ինձ շահն էր՝ զայն վնաս համարիմ վ՟ս Ք՟ի։ 8 *Այլ և համարիմ իսկ զամ՟ վնաս՝ վասն առաւել գիտութեան Յ՟ի Ք՟ի Տ՟ն իմոյ։ վ՟ս որոյ զամ՟ զրկեցայ՝ և համարիմ կղկղանս, զի զՔ՟ս շահեցայց։ 9 *Եւ գտայց ՚ի նմա, իբրև ոչ եթէ զիմ արդարութիւն, որ յօրինաց անտի է՝ ունիցիմ, այլ զհաւատոցն Ք՟ի Յ՟ի․ որ յԱ՟յ արդարութիւն է։ 10 *Հաւատովք ճանաչել զնա՝

‖Գործ. 23. 6.

 և

և զզօրութիւն յարութեան նր̅՝ և զհաղոր դութիւն չարչարանաց նորա՝ կերպարանակից լինիլ մահու նր̅։ *Թէ որպէս 11 հասից 'ի մեռելոցն յարութեան։ *Իբր 12 ոչ եթէ արդէն առեալ իցեմ, կամ կատարեալ իցեմ. զհետ մտեալ եմ թէ հասից, մանաւանդ թէ ըմբռնեալ իսկ իցեմ 'ի Ք̅է Յ̅է։ *Եղբարք՝ ես 13 ոչ համարիմ զանձն իմ թէ հասեալ իցեմ։ բայց մի ինչ է՝ զի զառ 'ի յետոյսն մոռացեալ եմ, և 'ի յառաջադէմսն նկրտեմ։ *Ուշ եդեալ՝ ընթանամ 14 'ի կէտ կոչմանն Ա̅յ 'ի Ք̅ս Յ̅ս։ *Այսուհետև՝ որք միանգամ կատարեալքդ էք՝ զայս խորհեցարուք։ և 15 եթէ այլ ազգ ինչ խորհիցիք՝ սակայն և զայն Ա̅ծ ձեզ յայտնեսցէ։ *Բայց 16 յոր ժամանեցաքս՝ զնոյն խորհիլ՝ և նմին կանոնի միաբան լինիլ։ *Նմանողք ինձ եղիջիք եղբարք՝ և դիտաջիք զայնպիսիսն, որք այնպէսն գնայցեն, որպէս ունիքդ զմեզ ձեզ օրինակ։ 17

Հռովմ. 16, 17.

*Զի բազումք գնան՝ զորոց բազում 18 անգամ ասէի ձեզ. (բայց արդ և լալով իսկ ասեմ) զթշնամեաց խաչին Ք̅ի։ *Որոց կատարածն կորուստ է. 19 որոց Ա̅ծ որովայնն է. և փառք ամօթն իւրեանց, որք զերկրաւորս և եթ խորհին։ *Այլ մեր առաքինութիւն յերկինս է. 20 ուստի և փրկչին ակն ունիմք Տ̅ն Յ̅ի Ք̅ի։ *Որ նորոգեսցէ զմարմին 21 խոնարհութեան մերոյ՝ կերպարանակից լինիլ մարմնոյ փառաց իւրոց, ըստ զօրութեանն՝ առ 'ի կարող լինելոյ հնազանդեցուցանել ընդ իւրև զամ̅։

## Գլ. Դ.

Այսուհետև եղբարք իմ սիրելիք 1 և անձկալիք, ուրախութիւն իմ, և պսակ. այսպէս հաստատուն կացէք 'ի Տր̅՝ սիրելիք։ *Զևոդիայ աղաչեմ, 2 և զսիւնտիք աղաչեմ, զնոյն խորհիլ 'ի Տր̅։ *Այո՞ աղաչեմ և զքեզ՝ մտերիմ 3 իմ և լծակից, և դու օգնական լինիջիր նց̅՝ որք յաւետարանին նահատակեցան ընդ իս կղեմաւ հանդերձ՝ և այլովք գործակցօք իմովք։ որոց անուանքն են 'ի դպրութեան կենաց։ *Ուրախ լերուք 'ի Տէր յամ̅ ժամ։ 4 դարձեալ ասեմ, ուրախ լերուք. *Հեզութի ձեր յայտնի լիցի ամ̅ մարդ 5 կան։ Տր̅ մերձ է։ *Մի ինչ հոգայք. 6 այլ ամ̅ աղօթիւք և խնդրուածօք, գոհութե̅ խնդրուածք ձեր յայտնի լիցին առ Ա̅ծ։ *Եւ խաղաղութիւն 7 Ա̅յ՝ որ 'ի վեր է քան զամ̅ միտս, պահեսցէ զսիրտս ձեր, և զմիտս 'ի Ք̅ս Յ̅ս։ *Այսուհետև եղբարք՝ որինչ 8 ճշմարտութե̅ է՝ որինչ պարկեշտութե̅, որինչ արդարութե̅, որինչ սրբութե̅, որինչ սիրով, որինչ համբաւ բարեաց, որինչ քաջութե̅, որինչ գովութեամբ՝ զայն խորհիջիք։ *Զոր ուսայքն, և 9 ընկալայք, և լուայք՝ և տեսիք յիս՝ զայն արարէք։ և Ա̅ծ խաղաղութե̅ եղիցի ընդ ձեզ։ *Ուրախ եղէ ես 'ի 10 Տր̅ յոյժ. զի և դուք զմտաւ ածիք հոգալ ինչ վ̅ն իմ. որպէս և հոգայիքն։ բայց բարբարէիք իմնէ։ *Իբր ոչ առ կա_ 11 րօտութեան ինչ ասեմ. զի ես ուսայ՝ որովք կարեմ բաւական լինիլ։ *Գիտեմ նուաղիլ, գիտեմ առաւելուլ՝ 12 (յամի ամենևին խելամուտ եմ,) և յագիլ՝ և քաղցենալ. և առաւելուլ՝ և նուաղիլ։ *Յամ̅ի կարող եմ, այնու՝ 13 որ զօրացոյցն զիս։ *Բայց բարւոք 14 արարիք՝ զի կցորդք եղէք ինձ 'ի նեղութեան։ *Գիտէք և դուք փիլիպպեցիք, 15 զի 'ի սկզբան աւետարանին իբրև ելի ես 'ի մակեդոնիայ՝ և ոչ մի եկեղեցի հաղորդեաց ինձ յաղագս տալոյ և առնլոյ՝ բայց միայն դուք։ *Զի և 'ի թեսաղոնիկ միանգամ և 16 երկիցս զպէտս իմ ետուք բերել։ *Իբր ոչ եթէ խնդրեմ զտուրսն, այլ 17 խնդրեմ զպտուղն, որ յաճախէ 'ի բան ձեր։ *Այլ իմ առեալ զամ̅, և 18 առաւելեալ եմ։ ընկալայ՝ և լի եմ 'ի ձեռն եպափրոդիտեայ, որ է 'ի ձէնջ հոտ անուշից՝ պատարագ ընդունելի հաճոյ Ա̅յ։ *Եւ Ա̅ծ իմ՝ լի արասցէ 19 զամենայն պէտս ձեր ըստ իւրում մեծութեանն, փառօք 'ի Ք̅ս Յ̅ս։

Հռովմ. 12, 1.

*Այլ Ա̅յ, և Հօր մերում փառք 20 յաւիտեանս յաւիտենից. Ամէն։
*Ողջոյն տաջիք ամենայն սրբոց՝ որք 21 'ի Ք̅ս Յ̅ս։ *Ողջոյն տան ձեզ՝ որք 22 ընդ իս են եղբարք։ *Ողջոյն տան 23 ձեզ ամենեքեան սուրբք. մանաւանդ որք 'ի տանէ կայսեր են։
*Շնորհք Տ̅ն Յ̅ի Ք̅ի ընդ ոգւոյդ 24 ձերում։ Ամէն։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍՆ·

Գլուխ Առաջներորդ :



1 ՊՕՂՈՍ ԱՌԱՔԵԼ Յի Քի կամօքն այ, և տիմոթէոս եղբայր : * 2 Առ կողոսացիս սրբս և հաւատացեալս եղբարս 'ի Քս Յս: * Շնորհք ընդ ձեզ և խաղաղութի յԱյ հօրէ մերմէ՝ և 'ի Տէ Յէ Քէ : * 3 Գոհանամք զԱյ և զհօրէ Տն մերոյ Յի Քի, յամ ժամ վասն ձեր աղօթս առնելով :* 4 Իբրև լուաք զհաւատսն ձեր՝ որ 'ի Քս Յս՝ Տր մեր. և զսէրն, զոր ընդ ամենայն սրբս ունիք: * 5 Վս յուսոյն՝ որ պահի ձեզ յերկինս. զորմէ լուայք բանիւն ճշմարտութե աւետարանին : * 6 Որ եհաս առ ձեզ. որպէս ընդ ամ աշխարհ աճէ՝ և պտղաբերէ. որպէս և 'ի ձերում միջի. յորէ յորմէ լուայք՝ և ծանեայք զշնորհսն Այ ճշմարտութբ : * 7 Որպէս ուսայք յեպափրեայ սիրելւոյ ծառայակցէ մերմէ, որ է հաւատարիմ վասն ձեր՝ պաշտօնեայ Քի Յի: * 8 Որ և պատմեաց մեզ զսէրն ձեր հոգւով : * 9 Վս այսորիկ և մեք յօրէ յորմէ լուաք՝ ոչ դադարեմք վասն ձեր աղօթս առնել՝ և խնդրուածս մատուցանել. զի լնուցուք զգիտութի կամացն նր, ամ իմաստութբ և հոգևոր հանճարով :* 10 Գնալ ձեզ արժանի Տն, յամ հաճութե, յամ գործս բարութե պտղաբերք՝ և աճեցունք գիտութբն Այ : * 11 Ամենայն զօրութբ զօրացեալք ըստ զօրութե փառացն նորա. յամ համբերութե և երկայնմտութե ուրախութբ : * 12 Գոհանալ զԱյ հօրէ՝ որ կոչեաց զձեզ 'ի մասն վիճակի սրբոցն 'ի լոյս : * 13 Որ փրկեաց զմեզ յիշխանութէ խաւարի, և փոխեաց զմեզ յարքայութի Որդւոյ իւրոյ սիրելւոյ : * 14 Որով ունիմք զփրկութի արեամբն նր, և զթողութիւն մեղաց՝ մարմնով նր: * 15 Որ է պատկեր աներևութին Այ, անդրանիկ ամ արարածոց : * 16 Զի նովաւ հաստատեցաւ ամ, որ ինչ յերկինս՝ և որ ինչ յերկրի : որք երևին, և որք ոչն երևին. եթէ աթոռք, եթէ Տրութիք, եթէ պետութիք, եթէ իշխանութիք. ամ ինչ նովաւ՝ և 'ի նոյն հաստատեցաւ : * 17 Եւ նա է յառաջ քան զամ. և ամ ինչ նովաւ եկաց բովանդակ : * 18 Եւ նա է գլուխ մարմնոյ եկեղեցւոյ. որ է սկիզբն, անդրանիկ 'ի մեռելոց. զի եղիցի ինքն յամի յառաջացեալ: * 19 Զի 'ի նմա հաճեցաւ ամ լրումն 20 Աստուածութեն բնակել: * Եւ նովաւ հաշտեցուցանել զամ 'ի նոյն: արար զխաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ. որ ինչ յերկրի՝ և որ ինչ յերկինս: * 21 Եւ զձեզ՝ որք երբեմն օտարացեալք էիք՝ և թշնամիք խորհրդովք 'ի գործս չարութե: * 22 Այժմ աւադիկ հաշտեցոյց անդամօք մարմնոյ իւրոյ, 'ի ձեռն մահուն իւրոյ : յանդիման կացուցանել զձեզ սրբս՝ և անբիծս՝ և անարատս առաջի նր : * 23 Եթէ կայցէք 'ի հաւատսն արմատացեալք և հաստատեալք. և անշարժք 'ի յուսոյ աւետարանին, զոր լուայք քարոզելոյ ընդ ամ արարածս 'ի ներքոյ երկնից. որոյ եղէ ես պօղոս պաշտօնեայ :* 24 Եւ արդ՝ ուրախ եմ 'ի չարչարանս իմ՝ վս ձեր. և լնում զպակասութի նեղութեն Քի 'ի մարմնի իմում վասն մարմնոյ նր՝ որ է եկեղեցի: * 25 Որոյ եղէ ես պօղոս պաշտօնեայ՝ ըստ տնտեսութեն Այ, որ տուեալ է ինձ 'ի ձեզ՝ կատարել զբանն 26 Այ: * Զխորհուրդն որ ծածկեալն էր 'ի յաւիտենից և յազգաց. որ այժմ 27 յայտնեցաւ սրբոց իւրոց : * Որոց կամեցաւ Այծ ցուցանել, թէ զինչ է մեծութի փառաց խորհրդոյ նր 'ի հեթանոսս, որ է Քս 'ի ձեզ՝ յոյսն փառաց: * 28 Զոր մեք քարոզեմք, և խրատեմք զամ մարդ՝ և ուսուցանեմք զամ մարդ ամ հոգևոր իմաստութբ. զի կացուցուք զամ մարդ կատարեալ 29 'ի Քս Յս: * Յոր և աշխատիմ պատերազմեալ ըստ յաջողութե նր՝ որ յաջողեալ է յիս զօրութբ:

Յօհաւ. 1. 3.

1. Կորն. 15. 20.

Յայտ. 1. 5.

քարոզե- ցեալ

## ԳԼ. Բ.

1 Կամիմ, զի գիտիցէք դուք՝ զորպիսի ճգնութիւն ունիմ յանձին վասն ձեր՝ և վասն լաւոդիկեցւոցն, և որոց չիցէ տեսեալ զերեսս իմ մարմնով։ 2 * Զի մխիթարեսցին սիրտք նոցա տեղեկացեալք սիրով. և յամ մեծութիւն լրութեան իմաստութեան՝ 'ի գիտութեան խորհրդոյ Այ Հօր 'ի Քսի Յսի։ 3 * Յորում ամենայն գանձք իմաստութեան և գիտութեան ծածկեալ կան։ 4 * Այլ զայս ասեմ, զի մի ոք զձեզ զառանցուսցէ պատիր բանիւք։ 5 * Զի թէպէտ մարմնով հեռի եմ, այլ հոգւով ընդ ձեզ եմ։ խնդամ, իբրև տեսանեմ զկարգն ձեր՝ և զհաստատութիւն հաւատոցն ձերոց՝ որ 'ի Քսի Յսի։

Ա. Կորն. 5. 3.

6 * Արդ՝ որպէս ընկալայք զՔսի Յսի զՏր, նովին գնասջիք։ 7 * Արմատացեալք և շինեալք 'ի նա, և հաստատեալք 'ի հաւատս, որպէս ուսայքն առաւելեալք 'ի նմին գոհութեամբ։ 8 * Զգոյշ լերուք՝ մի ոք իցէ՝ որ զձեզ կողոպտիցէ ճարտարմտութեամբ՝ և սնոտի խաբէութեամբ. որք ըստ մարդկան աւանդութեան՝ և ըստ տարերց աշխարհիս՝ և ոչ ըստ Քսի։ 9 * Զի 'ի նմա բնակի ամ լրումն Ածութեան մարմնապէս։ 10 * Եւ էք նովաւ լցեալք, որ է գլուխ ամենայն իշխանութեան և պետութեան։ 11 * Որով թլփատեցայք հաւատովք զանձեռագործ թլփատութիւնն՝ 'ի մերկանալ զանդամս մարմնոյ թլփատութեամբն Քսի։ 12 * Թաղեալք ընդ նմին 'ի մկրտութեանն, որով և ը՛ նմին յարեայք հաւատովք Այ ազդեցութեանն, որ յարոյց զնա 'ի մեռելոց։ 13 * Եւ զձեզ, որք երբեմն մեռեալքն էիք 'ի մեղս, և յանթլփատութեան մարմնոյ ձերոյ, կենդանացոյց յանձին իւրում, շնորհեաց մեզ զամ յանցանս մեր։ 14 * Եւ ջնջեաց զձեռագիր մերոյ հակառակութեանն հրամանօք իւրովք. որ կայր մեզ հակառակ՝ եբարձ զայն 'ի միջոյ՝ և բեւեռեաց ընդ խաչափայտին։ 15 * Մերկեաց զիշխանութիւնս և զպետութիւնս. յայտ յանդիման խայտառակեաց նշաւակեալ զնոսա յանձին իւրում 'ի յարուէն իւրում։ 16 * Մի ոք այսուհետև զձեզ դատեսցէ՝ ուտելով, կամ ըմպելով, կամ մասամբք տօնից, կամ ամսամտիւք՝ կամ շաբաթուք։ 17 * Որք են ստուերք հանդերձելոցն. այլ մարմինն Քսի է։ 18 * Մի ոք զձեզ խաբեսցէ, որ կամիցի խոնարհութեամբ և կրօնիւք հրեշտակաց, զոր չիցէ տեսեալ զրահետ վարեալ. տարապարտ հպարտացեալ 'ի մտաց 19 մարմնոյ իւրոյ։ * Եւ ոչ ունիցի ըզգլուխն Քսի՝ ուստի ամ մարմինն յօդիւք և խաղալեօք տարբերեալ և խառնեալ՝ աճէ զաճումն Այ։ 20 * Եթէ մեռայք ընդ Քսի 'ի տարերց աշխարհիս՝ զի՞ ևս իբրև զկենդանիս ատեան 21 յաշխարհի կրօնաւորիք։ * Մի մերձենար. մի ճաշակեր. մի հուպ լինիր։ 22 * Որ է ամ ինչ 'ի պէտս ապականութեան, ըստ պատուիրանաց և վարդապետութեան մարդկան։ 23 * Որ յիմաստութիւն իմն համարի, ինքնակամ կրօնիւք և խոնարհութեամբ՝ և անխնայութեամբ մարմնոյ. և ոչ 'ի պատիւ ինչ լրութեան մարմնոյ։

Որով և թլփատեցայք և թլփատութ, ոչ ձեռագործ, 'ի մերկանալ զանդամս մարմնոյ՝ այլ թլփատութեամբն Քսի։

Եփես. 2. 1.

Մատ. 24. 4.

## ԳԼ. Գ.

1 Եթէ յարեայք ընդ Քսի, ապա զվերինն խնդրեցէք, ուր Քսն 2 նստի ընդ աջմէ Այ։ * Զվերինն խորհեցարուք, մի զայս՝ որ յերկրի 3 աստ է։ * Քանզի մեռայք՝ և կեանքն ձեր ծածկեալ են ընդ Քսի յԱծ։ 4 * Յորժամ Քսն յայտնեսցի, կեանքն ձեր. յայնժամ և դուք ընդ նմա յայտ5 նեսջիք փառօք։ * Սպանէք այսուհետև զանդամս ձեր զերկրաւորս. 'ի բաց ընկեցէք զպոռնկութիւն, զպղծութիւն, զախտ, զցանկութիւն չարեաց, և զագահութիւն, որ է կռապաշտութիւն։ 6 * Վասն որոյ գայ բարկութիւնն Այ 'ի վերայ որդւոցն անհաւանութեան։ 7 * Որովք և դուք երբեմն գնայիք՝ մինչ 8 կենդանիքն էիք 'ի նոսա։ * Արդ՝ 'ի բաց թօթափեցէք և դուք զայն ամ. զբարկութիւն, զսրտմտութիւն, զչարութիւն, զհայհոյութիւն, զխեղկատակու9 թիւն 'ի բերանոց ձերոց։ * Մի ստէք միմեանց. մերկացարուք զհին մարդն 10 գործովք իւրովք։ * Եւ զգեցարուք զնորն նորոգեալ 'ի գիտութիւն ըստ 11 պատկերի արարչին իւրոյ։ * Ուր ոչ է հրեայ՝ և հեթանոս. թլփատութիւն, և անթլփատութիւն. խուժ՝ դուժ՝ սկիւթացի՝ ծառայ՝ ազատ. այլ ամ, և 12 յամի Քսն։ * Զգեցարուք այսուհետև իբրև ընտրեալք Այ՝ սուրբք և սիրեցեալք՝ զգթութ, զողորմութիւն, զքաղցրութիւն, զխոնարհութիւն, զհե13 զութիւն, զերկայնմտութիւն։ * Ներել միմեանց. շնորհել իրերաց. եթէ ուրուք զումեքէ տրտունջ ինչ իցէ, որպէս և Տրն Քսն շնորհեաց ձեզ՝ նոյնպէս և 14 դուք։ * Եւ 'ի վերայ այսր ամի զսէրն, 15 որ է զօդ կատարմանն։ * Եւ խաղաղութիւնն Քսի հաստատեսցի 'ի սիրտս ձեր. յոր և կոչեցայքն միով մարմնով։ 16 և գոհացօղք լինիջիք։ * Զի բանն Քսի բնակեսցէ 'ի ձեզ առատապէս, ամ

Եփես. 5. 3.

Հռով. 6. 4.

Եփես. 4. 22.

Եբր. 12. 1.

Ա. Պետ. 2. 1.

Ա. Կոր. 12. 13.

Գաղ. 3. 28.

ամ իմաստութիւն, ուսուցանել և խրատել զմիմեանս․ սաղմոսիւք և օրհնութեամբք, և երգովք հոգևորօք՝ և շնորհօք օրհնել 'ի սիրտս ձեր զԱծ։ 17 *Եւ զամ զոր և առնիցէք բանիւք և արդեամբք, զամ յանուն Տն Յի արասջիք։ գոհացօղք լինիջիք զԱծ և զՀօրէ նովաւ։ (1.Կորն. 10.31.)

18 *Կանայք հնազանդ լերուք արանց ձերոց, որպէս և վայել է 'ի Տէր։ (Եփես. 5.22.) 19 *Արք սիրեցէք զկանայս ձեր, և մի դառնացուցանէք զնոսա։ (1.Պետ. 3.1.) 20 *Որդիք հնազանդ լերուք ծնողաց ձերոց յամի՝ զի այն է հաճոյ առաջի Տն։ (Եփես. 6.1.) 21 *Հարք՝ մի զայրացուցանէք զորդիս ձեր․ զի մի տրտմեսցին։ (Եփես. 6.4.) 22 *Ծառայք հնազանդ լերուք տերանց ձերոց յամի, մի առ ական ծառայութեամբ իբրև մարդահաճոյք․ այլ միամտութեամբ սրտի երկնչիլ 'ի Տէ։ (Տիտոս. 2.9. 1.Պետ. 2.18.) 23 *Զոր ինչ առնիցէք՝ սրտիմտօք գործեսջիք իբրև Տն, և ոչ իբրև մարդկան։ 24 *Գիտասջիք զի 'ի Տէ առնուցուք զհատուցումն ժառանգութեան ձերոյ․ քանզի Տն Քսի ծառայէք։ 25 *Իսկ ապիրատն ընկալցի ըստ իւրում ապիրատութեան․ զի չիք ակնառութիւն առաջի Այ։ (Հռով. 2.6. և 11.)

## ԳԼ․ Դ․

1 Տեարք, զիրաւունս և զհաւասարութիւն ծառայից ձերոց շնորհեցէք․ գիտասջիք՝ զի և ձեր Տր գոյ յերկինս։ 2 *Աղօթից ստէպ կացէք․ տքնիլ 'ի նմին գոհութեամբ։ (Ղուկ. 18.1.) 3 *Աղօթս արարէք միանգամայն և վասն մեր․ զի Ած բացցէ մեզ զդուռն բանի, խօսիլ զխորհուրդն Քի, (վասն որոյ և կապեալս կամ։) (1.Թես. 5.17. Եփես. 6.19.) 4 *Զի յայտնի արարից զնա՝ որպէս արժան իցէ ինձ խօսել։ (2.Թես. 3.1.) 5 *Իմաստութեամբ գնասջիք առ արտաքինսն, գնոյ առեալ զժամանակս։ (Եփես. 5.15.) 6 *Եւ բանն ձեր յամ ժամ լի շնորհօքն Տն իբրև աղիւ համեմեալ լիցի․ գիտել որպէս արժան իցէ ձեզ իւրաքանչիւր ումեք տալ պատասխանի։

7 *Զամ որինչ զինէն իցէ՝ ցուցցէ ձեզ զամ Տիւքիկոս սիրելի եղբայր՝ և հաւատարիմ պաշտօնեայ՝ և ծառայակից 'ի Տր։ 8 *Զոր առաքեցի առ ձեզ դմին իրի, զի գիտասջիք վասն մեր, և մխիթարեսցէ զսիրտս ձեր։ 9 *Ոնեսիմաւ հանդերձ եղբարբ՝ հաւատարմաւ և սիրելեաւ՝ որ է 'ի ձէնջ․ զամենայն ինչ ցուցցէ ձեզ՝ որինչ աստ է։ 10 *Ողջոյն տայ ձեզ Արիստարքոս գերեկից իմ․ և Մարկոս եղբօրորդի Բառնաբայ․ վա որոյ առիք զպատուէր՝ եթէ եկեսցէ առ ձեզ՝ ընկալջիք զնա։ 11 *Եւ Յիսու՝ որ անուանեցաւ Յուստոս․ որք են 'ի թլփատութենէ անտի․ զի դոքա միայն եղեն գործակիցք ինձ յարքայութեանն Այ, որք և եղեն ինձ մխիթարութիւն։ 12 *Ողջոյն տայ ձեզ Եպափրաս՝ որ 'ի ձէնջ ծառայ Քի Յի է․ յամենայն ժամ պատերազմեալ վասն ձեր յաղօթս, զի կայցէք կատարեալք և լցեալք յամ կամս Այ։ 13 *Վկայեմ նմա, զի բազում աշխատութիւն ունի վա ձեր, և վասն Լաւոդիկեցւոցն, և վասն այնոցիկ՝ որք յԵրապօլիսն են։ 14 *Ողջոյն տայ ձեզ Ղուկաս բժիշկ և սիրելի, և Դեմաս։ (2.Տիմ. 4.11.) 15 *Ողջոյն տասջիք եղբարց՝ որք են 'ի Լաւոդիկիայ և Նիմփայ։ և որ առ տնին եկեղեցին է նր։ 16 *Եւ յորժամ ընթեռնուցու առ ձեզ զթուղթդ՝ արասջիք, զի և 'ի Լաւոդիկեցւոց եկեղեցւոջն ընթերցցի․ և զառ 'ի Լաւոդիկեցւոցն՝ զի և դուք ընթեռնուցուք։ 17 *Եւ ասասջիք Արքիպպոսի՝ զգոյշ լեր սպասաւորութեանդ՝ զոր ընկալար 'ի Տր, զի զայդ կատարեսցես։ 18 *Ողջոյնդ ձեռին իմոյ Պօղոսի է․ Յուշ լիցին ձեզ կապանքս իմ։ Շնորհք ընդ ձեզ։ Ամէն։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ԹԵՍԱՂՕՆԻԿԵՑԻՍՆ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ։

Գլուխ Առաջներորդ։



1 ՕՂՈՍ ԵՒ ՍԻՂՈՒԱՆՈՍ, և Տիմոթէոս՝ եկեղեցւոյ Թեսաղօնիկեցւոց յԱծ Հայր և ՚ի Տր մեր Յս Քս ։ 2 * Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն ։ Գոհանամք զԱյ յամ ժամ վս ձեր ամենեցուն՝ յիշատակ առնել յաղօթս մեր անդադար։ 3 * Յիշել զձեր գործն հաւատոյ՝ և ըզ վաստակ սիրոյ՝ և զհամբերութի յուսոյն Տն մերոյ Յի Քի առաջի Այ և Հօր մերոյ։ 4 * Գիտեմք եղբարք, սիրեցեալք յԱյ՝ զընտրութիւն ձեր։ 5 * Զի աւետարանն մեր ոչ եղև առ ձեզ բանիւ միայն . այլ և զօրութբ՝ և Հոգւով սրբով՝ և լրութբ բազմաւ . որպ և գիտէք իսկ՝ թէ որպիսիք եղեաք ՚ի միջի ձերում վասն ձեր։ 6 * Եւ դուք նմանօղք մեզ եղէք՝ և Տն. ընկալեալք զբանն ՚ի բազում նեղութե, խնդութբ Հոգւոյն սրբոյ։ 7 * Լինել ձեզ օրինակ ամենեցուն հաւատացելոց . որք են ՚ի Մակեդոնիա՝ և յԱքայիա։ 8 * Զի ՚ի ձէնջ հնչեաց բանն Տն. ոչ միայն ՚ի Մակեդոնիա և յԱքայիա, այլ և յամ տեղիս հաւատքն ձեր՝ որք առ Ած են, սփռեցան ։ զի այսուհետև ոչ ինչ է պիտոյ մեզ և խօսել ինչ։ 9 * Զի նոքին իսկ պատմեն վասն մեր, թէ որպ եղև մեզ մուտ առ ձեզ . և որպէս դարձայք առ Ած ՚ի կռոց անտի, ծառայել Այ կենդանւոյ և ճշմարտի ։ 10 * Եւ ակնունել Որդւոյ նորա յերկնից. զոր յարոյց ՚ի մեռելոց զՅս, որ փրկեաց զմեզ ՚ի բարկութենէ անտի որ գալոցն է։

## ԳԼ։ Բ.

1 Դուք ինքնին գիտէք եղբարք ըզ մուտն մեր առ ձեզ . զի ոչ ընդունայն ինչ եղև ։ 2 * Այլ յառաջագոյն ‖ չարչարեալք՝ և թշնամանեալք՝ (որպ և դուք իսկ գիտէք ։ ) ՚ի մէջ փիլիպպեցւոց, համարձակեցաք Ած մերով պատմել ձեզ զաւետարանն Այ մեծաւ պատերազմաւ ։ 3 * Զի մխիթարութիւն մեր ոչ ՚ի մոլորութենէ՝ և ոչ ՚ի պղծութենէ՝ և ոչ նենգութբ ։ 4 * Այլ որպ ընտրեցաք յԱյ հաւատարիմ լինել աւետարանին, նոյնպէս և խօսիմք ։ ոչ իբրև մարդկան հաճոյ լինել՝ այլ Այ, որ քննէն զսիրտս մեր։ 5 * Զի ոչ երբեք բանիւք ողոքանաց եղեաք առ ձեզ՝ որպ և դուք իսկ գիտէք ։ և ոչ ՚ի պատճառս ագահութե, 6 որպ և Ած վկայէ ։ * Եւ ոչ խնդրեաք զփառս ՚ի մարդկանէ ։ ոչ ՚ի ձէնջ. և 7 ոչ յայլոց ։ * Կարօղք էաք իբրև զՔի առաքեալս ծանրանալ . այլ եղեաք հեզք ՚ի միջի ձերում, որպ դայեակ մի 8 որ սնուցանիցէ մանկունս ։ * Նոյնպէս և մեք գթայաք ՚ի ձեզ ։ հաճոյ թուէր մեզ տալ ձեզ ոչ միայն զաւետարանն Այ, այլ և զանձինս մեր ։ քանզի 9 սիրելիք մեր եղէք ։ * Յիշէք եղբարք զվաստակն մեր և զջան ։ ‖ զի զցայգ և զցերեկ գործէաք վասն չծանրանալոյ ումեք ՚ի ձէնջ . և քարոզէաք ձեզ զաւե10 տարանն Այ ։ * Դուք ինքնին վկայք էք՝ և Ած . որպէս սրբութբ՝ և արդարութբ՝ և անբծութբ՝ ձեզ հաւատա11 ցելոցդ եղեաք ։ * Որպ և գիտէք իսկ . զի զիւրաքանչիւրոք ՚ի ձէնջ ( իբրև 12 հայր զորդիս ։ ) * Մխիթարեաք և սփոփէաք ։ և դնէաք զվկայութիւն գնալ ձեզ արժանապէս Այ, որ կոչեացն զձեզ յիւր արքայութիւն և ՚ի 13 փառս ։ * Վն այնորիկ և մեք գոհանամք զԱյ անպակաս՝ զի առեալ զլուր բանին Այ առ ՚ի մէնջ, ընկալայք ոչ իբրև զբան մարդկան . այլ ( որպ ճշմարտիւ ) զբան Այ ։ որ և յաջողեալ իսկ 14 է ՚ի ձեզ հաւատացելոցդ ։ * Զի դուք նմանօղք եղէք եղբարք՝ եկեղեցեացն Այ՝ որք են ՚ի Հրէաստանի ՚ի Քս Յս ։ զի զնոյն չարչարանս չարչարեցայք և դուք ՚ի ձերոց ազգակցաց՝ որպէս և 15 նոքայն ՚ի Հրէից ։ * Որք և զՏրն Յս սպանին, և զմարգարէսն ։ և զմեզ հալածեցին ։ և Այ յաչաց ելին . և ամ մարդ-

‖ Գործ. 16. 19.

‖ Գործ. 20. 34. 1. Կորն. 4. 12. 2. Թես. 3. 8.

մարդկան հակառակք եղեն։ 16 * Եւ արգելուին զմեզ խօսիլ հեթանոսաց զի ապրեսցին․ զի կատարեսցեն զմեղս իւրեանց յամ ժամ․ քանզի հասեալ է 'ի վր նոցա բարկութին մինչև իսպառ։
17 * Այլ մեք եղբարք՝ թէպէտ և որբ մնացաք 'ի ձէնջ առժամանակ մի, երեսօք՝ և ոչ սրտիւք․ առաւել ևս փութացաք տեսանել զերեսս ձեր մեծաւ ցանկութբ․ 18 * Ուստի այսորիկ կամեցայ գալ առ ձեզ ես պօղոս՝ միանգամ և երկիցս․ և խափանեաց զմեզ սատանայ։ 19 * Քանզի ո՞վ է մեր յոյս, կամ խնդութին, կամ պսակ պարծանաց մերոյ․ եթէ ոչ դուք 'ի Տր՝ առաջի Տեառն մերոյ Յի Քի 'ի նորա գալստեանն։ 20 * Զի դուք էք փառք մեր, և խնդութին։

## ԳԼ: Գ։

1 Վասն որոյ ոչ ևս ունիմք ժոյժ՝ զի բարւոք թուեցաւ մեզ միայն մնալ յաթէնս։ 2 *‖ Եւ առաքեցաք զտիմոթէոս եղբայր մեր՝ և զգործակից աւետարանին Այ և Հօրն Քի․ հաստատել զձեզ՝ և մխիթարել վս հաւատոյն ձերոյ։ 3 * Զի մի տագնապեսջիք 'ի նեղութիս յայսոսիկ․ քանզի դուք ինքնին իսկ գիտէք, զի 'ի սոյն կամք։ 4 * Քանզի մինչ առ ձեզն իսկ էաք՝ յառաջագոյն ասէաք ձեզ, թէ նեղութիք հասանելոց են 'ի վերայ մեր․ որպ և եղև իսկ՝ և գիտացիք։ 5 * Վս այնորիկ և ես զի ոչ ևս ունէի ժոյժ՝ առաքեցի գիտել զհաւատսն ձեր․ գուցէ արդեօք փորձեաց և զձեզ փորձիչն․ և ընդունայն լինիցի ջանն մեր։ 6 * Բայց արդ իբրև եկն տիմոթէոս 'ի ձէնջ առ մեզ՝ և ետ մեզ զաւետիս հաւատոյն ձերոյ և զսիրոյ․ զի ունիք 'ի միտի զյիշատակս մեր բարեաց յամ ժամ․ ցանկացեալ էք տեսանել զմեզ՝ որպ և մեք զձեզ։ 7 * Վասն այնորիկ մխիթարեցաք 'ի ձեզ եղբարք՝ 'ի վր ամենեցուն վշտաց և նեղութեանց ձերոց՝ 'ի ձեռն հաւատոյն ձերոյ։ 8 * Զի այժմ կենդանի եմք՝ եթէ դուք հաստատուն կայցէք 'ի Տր։ 9 * Զի՞նչ կարեմք գոհութին մատուցանել Այ վասն ձեր, 'ի վր ամ խնդութեն, զոր խնդամք վասն ձեր առաջի Այ մերոյ։ 10 * Զցայգ և զցերեկ առաւել ևս աղաչեմք տեսանել զերեսս ձեր․ և հաստատել զպակասութին հաւատոյն ձերոյ։ 11 * Այլ ինքն ԱԾ և Հայր մեր՝ և Տր մեր Յս Քս ուղղեսցէ զճանապարհս մեր առ ձեզ։ 12 * Եւ զձեզ ինքն Տր բազմապատիկս և առաւելս արասցէ սիրով ընդ միմեանս և առ ամենեսին՝ որպ և մեք 'ի ձեզ։ 13 * Հաստատել զսիրտս ձեր անարատս 'ի սրբութին առաջի Այ և Հօր մերոյ, 'ի գալստեան Տն մերոյ Յի Քի համագերձ ամ սրբովք իւրովք․ Ամէն։

‖ Գործ. 16. 1.

և լնուլ

## ԳԼ: Դ։

1 Այսուհետև եղբարք, աղաչեմք զձեզ՝ և մխիթարեմք 'ի Քս Յս․ զի որպ ընկալայք 'ի մէնջ՝ թէ որպ պարտ իցէ ձեզ գնալ՝ և հաճոյ լինել Այ․ որպ և գնայքդ իսկ․ զի ևս քանզևս յաւելանայցէք 'ի նոյն։ 2 * Եւ գիտէք՝ թէ որպիսի պատուիրանս տուաք ձեզ 'ի Տր Յս։ 3 * ‖ Զի այս են կամքն Այ, սրբութին ձեր․ 'ի բաց լինել ձեզ 'ի պոռնկութէ, 4 * Գիտել իւրաքանչիւր ումեք 'ի ձէնջ զիւր աման ստանալ 5 սրբութբ և պատուով։ * Մի 'ի ցաւս ցանկութեն՝ որպէս և այլք հեթանոսք՝ 6 որք ոչ գիտեն զԱԾ։ * Մի զանցանել և զրկել յիրիդ յայդմիկ զեղբայր իւր․ քանզի վրէժխնդիր է Տր 'ի վր ամի այդորիկ․ որպէս յառաջագոյն ասացաք ձեզ, և եդաք զվկայութին։
7 * Քանզի ոչ կոչեաց զմեզ ԱԾ 'ի պղծ8ութի՝ այլ 'ի սրբութի։ * Այսուհետև որ զձեզ անարգէ՝ ոչ զմարդ անարգէ, այլ զԱԾ՝ որ և ետ զՀոգին իւր 9 սբ 'ի ձեզ։ * Այլ վս եղբայրսիրութեն՝ չէ ինչ պիտոյ գրել առ ձեզ․ ‖ զի դուք ինքնին իսկ ԱԾուսոյցք էք առ 'ի զմի10մեանս սիրելոյ։ * Քանզի և առնէք իսկ զդոյն յամենեսեան եղբարս՝ որք են յամենեսեան կողմանս մակեդոնացւոց․ աղաչեմք զձեզ եղբարք՝ առաւել ևս առաւելուլ և առատանալ՝ 11 հանդարտիլ․ * Եւ գործել զիւրաքանչիւր․ և գործել ձեռօք ձերովք որպ և պատուիրեցաք ձեզ․ զի գնայցէք պարկեշտութբ առ արտաքինսն՝ և մի 12 ինչէք կարօտեալք իցէք։ * Ոչ կամիմք եղբարք՝ եթէ տգէտք իցէք վս ննջեցելոց․ զի մի տրտմիցիք որպ և այլքն՝ 13 որոց ոչ գոյ յոյս։ * Եթէ հաւատամք՝ եթէ Յս մեռաւ և յարեաւ․ նոյնպէս և ԱԾ զննջեցեալսն 'ի ձեռն Յի ածցէ 14 ընդ նմա։ * Բայց զայս ասեմք Տն բանիւ, ‖ եթէ մեք՝ որք կենդանիքս եմք մնացեալք՝ 'ի գալստեանն Տն ոչ ժա15մանեմք ննջեցելոցն։ * Զի ինքնին Տր հրամանաւ՝ և 'ի ձայն հրեշտակապետի, և 'ի փող Այ իջանէ յերկնից․ և մեռեալք 'ի Քս յարիցեն յառաջա16գոյն։ * Ապա և մեք՝ որք կենդանիսոյն մնացեալ լիցիմք՝ նոքօք հանդերձ յափշտակիցուք ամպօք ընդ առաջ Տն յօդս․ և այնպէս յամ ժամ ընդ Տն լինիցիմք։
* Այս

'ի Տր Յս

‖ Հռով. 12. 2.

Եփես. 5. 17.

‖ Յովհ. 13. 34. և 15.12. 17. 1. Յովհ. 2.10. և 4. 12.

Իւրաքանչիւր գործ իւր.

‖ 1. Կորն. 15. 23.

* Այսուհետեւ մխիթարեցէք զմի- մեանս բանիւքս այսոքիւք։ 17

## ԳԼ. Ե.

Այլ վասն ժամուց և ժամանակաց 1 եղբարք չէ ինչ պիտոյ գրել առ ձեզ։ * Զի դուք ինքնին իսկ ստոյգ 2 գիտէք, թէ օրն Տ՟ն իբրև զգող գի- շերի այնպէս հասանէ։ * Յորժամ 3 ասիցեն թէ խաղաղութիւն և շինութիւն է՝ յայնժամ յանկարծակի հասցէ նո՟ց սատակումն՝ որպէս երկն յղւոյ՝ և մի ապ- րեսցին։ * Այլ դուք եղբարք՝ ոչ էք 4 ՚ի խաւարի՝ թէ օրն ձեր իբրև զգող ՚ի վերայ հասանիցէ։ * Զի ամենե- 5 քին դուք որդիք լուսոյ էք՝ և որդիք տունջեան։ չեմք գիշերոյ՝ չեմք խաւա րի։ * Ապա մի զքնով անկանիցիմք՝ 6 որպէս և այլքն։ այլ արթունք, և զուար թունք եղիցուք։ * Զի որք ննջեն, ՚ի 7 գիշերի ննջեն. և որք արբենան, ՚ի գի շերի արբենան։ * Այլ մեք՝ զի տուըն- 8 ջեան եմք, արթունք եղիցուք՝ և զգեցցուք զզրահսն հաւատոյ և զսի- րոյ։ և դիցուք զսաղաւարտ յուսոյն փրկութեան։ * Զի ոչ եդ զմեզ Ա՟ծ ՚ի 9 բարկութիւն, այլ ՚ի փրկութիւն կենդա նութեան ՚ի ձեռն Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի։ * Որ մեռաւ վասն մեր. զի եթէ ար- 10 թունք իցեմք՝ և եթէ ննջիցեմք՝ նո- վաւ հանդերձ կեցցուք։ * Վասն որոյ 11 մխիթարեցէք զմիմեանս՝ և շինեցէք զիրեարս՝ որպէս և առնէքդ իսկ։

Բ.Պետ. 3. 10. Յայտ. 3. 3. և 16. 15. Եսայ. 59. 17. Եփես. 6. 14. 17.

12 * Աղաչեմք զձեզ եղբարք ճանաչել զվաստակաւորս և զվերակացուս ձեր 13 ՚ի Տ՟ր՝ և զխրատիչս ձեր։ * Եւ համա րեցարո՛ւք զնոսա արժանիս առաւել սիրոյ՝ վասն գործոյ նոցա։ զխաղաղու- 14 թիւն արարէք ընդ միմեանս։ * Աղա- չեմք զձեզ եղբարք՝ խրատեցէք զստա հակս։ մխիթարեցէք զկարճամիտս։ պաստպարան լերո՛ւք տկարաց։ եր- կայնամիտ լերո՛ւք առ ամենեսին։ 15 * Զգո՛յշ լերուք՝ գուցէ ոք չարի ըն- չար հատուցանիցէ։ այլ յամ ժամ զբարեաց զհետ երթա՛յք առ միմեանս, 16 և առ ամենեսեան։ * Յամ ժամ ուրա՛խ 17 լերուք։ * Անդադար աղօթս արա- 18 րէք։ * Յամի գոհացարո՛ւք։ զի այս են 19 կամք Ա՟յ Ք՟ի Յ՟ի ՚ի ձեզ։ * Զհո- 20 գին մի շիջուցանէք։ * Զմարգարէու- 21 թիւնս մի արհամարհէք։ * Զամ ինչ փորձեցէ՛ք. զբարին ընկալարո՛ւք։ 22 * Յամ իրաց չարաց ՚ի բա՛ց կայէք։ 23 * Եւ ինքն Ա՟ծ խաղաղութեան սրբես- ցէ զձեզ համօրէնս։ և բովանդակ ձեր ոգի և շունչ և մարմին անարատ ՚ի գալուստ Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի պահեսցի։ 24 * Հաւատարիմ է՝ որ կոչեաց զձեզ. 25 որ և արասցէ զնոյն։ * Եղբարք՝ աղօթս 26 արարէք և ՚ի մեր վերայ։ * Ողջոյն տա ջիք եղբարցն ամենեցուն ՚ի համբոյր 27 սրբութեան։ * Երդմնեցուցանեմ զձեզ ՚ի Տ՟ր՝ ընթեռնուլ զթուղթդ առաջի 28 ամ եղբարցդ սրբոց։ * Շնորհք Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի ընդ ձեզ։ Ամէն։

Առակ. 17. 13. և 20. 22. Հռով. 12. 17. Ա.Պետ. 3. 9. Սիր. 18. 22. Ղուկ. 18. 1. Կող. 4. 2. Ա.Կոր. 1. 9.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ԹԵՍԱ-
## ՂՕՆԻԿԵՑԻՍՆ ԵՐԿՐՈՐԴ։

Գլուխ Առաջներորդ։



ՊՕՂՈՍ 1 ԵՒ ՍԻՂՈՒ- անոս և Տիմո- թէոս, եկեղեց- ւոյդ Թեսաղո- նիկեցւոց՝ յԱ՟ծ Հայր մեր, և ՚ի Տ՟ր Յ՟ս Ք՟ս։ * Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն 2 յԱ՟յ Հօրէ մերմէ, և ՚ի Տ՟է Յ՟է Ք՟է։ * Գոհանալ պարտիմք զԱ՟յ յամ ժամ 3 վասն ձեր եղբարք՝ որպէս և արժան իսկ է. զի ևս քան զևս աճէն հաւատքն ձեր, և յաճախէ սէր իւրաքանչիւր ձեր 4 ամենեցուն առ միմեանս։ * Որպ և մեզ ձեօք պարծիլ յեկեղեցիսն Ա՟յ՝ վասն համբերութեան ձերոյ և հաւատոյ՝ յամ հալածանս ձեր և ՚ի նեղութիւնս, որոց 5 դուքն համբերէք։ * Յօրինակ արդար դատաստանին Ա՟յ. արժանի լինել ձեզ արքայութեանն Ա՟յ՝ վասն որոյ և 6 զճգնութիւնդ կրէք։ * Եթէ պարտ է առաջի Ա՟յ՝ հատուցանել նեղչացն 7 ձերոց զնեղութիւն։ * Եւ ձեզ նեղե- լոցդ զհանգիստ ընդ մեզ՝ ՚ի յայտնու- թեան Տ՟ն մերոյ Յ՟ի, յերկնից հրեշտա- 8 կօք զօրութեան իւրոյ։ * ՚Ի բոց հրոյ առ-

առնուլ զվրէժս յայնցանէ՝ ոյք ոչ ճա նաչեն զԱծ, և որք ոչ հնազանդեն աւետարանի Տն մերոյ Յի Քի ։
9 * Որք տայցեն վրէժս 'ի սատակումն յաւիտենից՝ յերեսաց Տն և 'ի փառաց զօրութե նորա ։ 10 * Յորժամ գայցէ փառաւոր լինել 'ի մէջ սրբոց իւրոց, և սքանչելի 'ի մէջ ամ հաւատացելոց. զի հաւատարիմ եղև վկայութիւնն մեր 'ի վերայ ձեր յաւուր յայնմիկ ։
11 * Յոր և աղօթս առնեմք վն ձեր յամ ժամ, զի զձեզ արժանիս արասցէ կոչմանն ձերում Այծ մեր՝ մինչև լցցէ զամ զհաճութի բարութե, և զգործս հաւատոյն զօրութբ ։ 12 * Զի փառաւոր լիցի անուն Տն մերոյ Յի Քի 'ի ձեզ՝ և դուք 'ի նմա. ըստ շնորհացն Այծ մերոյ՝ և Տն Յի Քի ։

## ԳԼ. Բ.

1 Աղաչեմք զձեզ եղբարք՝ վն գալստեան Տն մերոյ Յի Քի, և մերոյ ժողովելոյն առ նա ։ 2 * Մի վաղվաղակի խռովիլ ձեզ 'ի մտաց. և մի զարհուրիլ. մի հոգւով՝ և մի բանիւ, և մի թղթով իբրև թէ 'ի մէնջ. իբր եթէ եկեալ հասեալ իցէ օրն Տն
3 *‖ Մի ոք զձեզ խաբեսցէ՝ և մի իւիք իրօք. զի եթէ ոչ նախ եկեսցէ ապստամբութիւն, և յայտնեսցի մարդն անօրէնութե, որդին կորստեան,
4 * Հակառակորդն հպարտացեալ 'ի վր ամի, որ անուանեալ իցէ Այծ, կամ պաշտօն. մինչև նստիլ նմա 'ի տաճարին Այ, և ցուցանել զանձն թէ Այծ իցէ ։ 5 * Ոչ յիշէք՝ զի մինչ առ ձեզն էի՝ ասէի զայս ։ 6 * Եւ արդ դուք ինքնին գիտէք զայն՝ զոր ունի յայտնիլ նմա յիւրում ժամանակի ։ 7 * Զի խորհուրդն անօրէնութե արդէն իսկ զօրանայ ։ բայց յայնժամ մինչ 'ի միջոյ բարձցի՝ որ այժմդ ունի ։ 8 * Եւ ապա յայտնեսցի անօրէնն. ‖ զոր Տէր Յս սատակեսցէ հոգւով բերանոյ իւրոյ ։ և խափանեսցէ յայտնութբ գալստեան իւրոյ ։ 9 * Որոյ գալուստն ըստ ազդեցութե սատանայի է, ամ զօրութբ և նշանօք, և արուեստիւք ստօք ։
10 * Եւ ամ պատրանօք անիրաւութե 'ի վերայ կորուսելոցն ։ փոխանակ զի զսէրն ճշմարտութե ոչ ընկալան՝ զի ապրեսցին ։ 11 և վն այնորիկ առաքեսցէ նց Այծ ազդեցութի մոլորութե, հաւատալ նոցա ստութեն ։ * Զի դատապարտեսցին ամենեքեան՝ որք ոչ հաւատացին ճշմարտութեն, այլ հաճեցան ընդ անօրէնութիւն ։ 12 13 * Այլ մեք պարտիմք գոհանալ զԱյ յամ ժամ



վասն ձեր եղբարք սիրեցեալք 'ի Տէ ։ զի ընտրեաց զմեզ Այծ 'ի սկզբանէ 'ի փրկութի սրբութբ հոգւոյն՝ և հաւատովքն ճշմարտութե ։ 14 * Յոր և կոչեաց զձեզ աւետարանաւն մերով 'ի փրկութի փառաց Տն մերոյ Յի Քի ։
15 * Այսուհետև եղբարք՝ հաստատուն կացէք՝ և պինդ կալարուք զաւանդութիւն՝ զորս ուսայք՝ եթէ բանիւ, և եթէ թղթով մերով ։ 16 * Այլ ինքն Տր մեր Յս Քս՝ և Այծ և Հայր մեր, որ սիրեացն զմեզ՝ և ետ մեզ զմխիթարութի յաւիտենից՝ և զյոյս բարեաց շնորհօք, 17 * Մխիթարեսցէ զսիրտս ձեր՝ և հաստատեսցէ յամ բանս և 'ի գործս բարութե ։

[Margin: չՏեր; 'ի փառս_ ցուցանելոյ ; փառաց]

## ԳԼ. Գ.

1 Այսուհետև եղբարք՝ ‖ աղօթս արարէք 'ի վերայ մեր. զի բանն Տն ընթանայցէ. և փառաւոր լինիցի յամ տեղիս՝ որպէս և առ ձեզդ ։ 2 * Զի ապրեսցուք յանօրինաց և յանզգամաց մարդոց ։ զի ոչ ամենեցուն են հաւատք ։
3 * Այլ հաւատարիմ է Տր, որ և հաստատեսցէ զձեզ՝ և պահեսցէ 'ի չարէ անտի ։ 4 * Վստահ եմ 'ի ձեզ Տր, թէ զոր պատուիրեցաք ձեզ ։ և առնէք՝ և առնիցէք ։ 5 * Այլ Տր ուղղեսցէ զսիրտս ձեր 'ի սէրն Այ և 'ի համբերութիւն Քի ։ 6 * Պատուիրեմ ձեզ եղբարք՝ յանուն Տն մերոյ Յի Քի, խորշիլ ձեզ յամ եղբօրէ՝ որք ստահակսն գնայցեն. և ոչ ըստ աւանդութեն, զոր ընկալայք 'ի մէնջ ։ 7 * Զի դուք ինքնին գիտէք՝ թէ որպ պարտ է ձեզ նմանիլ մեզ ։ և ոչ երբէք ստահակեցաք առ ձեզ ։ 8 * ‖ Եւ ոչ ձրի զուրուք զհաց կերաք՝ այլ ջանիւ և վաստակով զցայգ և զցերեկ գործէաք՝ վն չծանրանալոյ ումեք 'ի ձէնջ ։ 9 * Ոչ եթէ չունէաք իշխանութի. այլ զի զանձինս օրինակս արասցուք ձեզ՝ նմանօղս լինիլ մեզ ։ 10 * Քանզի մինչդեռ առ ձեզն իսկ էաք՝ զայս պատուիրէաք ձեզ ։ թէ որ ոչն կամիցի գործել՝ և կերիցէ մի ։
11 * Արդ՝ լսեմք զոմանց 'ի ձէնջ՝ թէ ստահակութբ գնան, գործ ինչ ոչ գործեն, այլ յուլացեալք հետաքրքիր շրջին ։ 12 * Այնպիսեացն պատուէր տամք՝ և աղաչեմք 'ի Տր Յս Քս. զի հանդարտութբ գործեսցեն՝ և զիւրեանց հաց կերիցեն ։
13 * ‖ Այլ դուք եղբարք՝ մի ձանձրանայք զբարիս գործել ։
14 * Ապա եթէ ոք ոչ հնազանդեսցի բանիս մերոյ թղթովդ այդուիկ, դուք նշանակեսջիք զնա. և մի խառնա-

[Margin: ‖ Եփես. 5. 6. ; ‖ Եսայ. 11. 4. ; ‖ Եփես. 6. 19. ; Կողոս. 4. 3. ; Այծ ; չէ ոչ երբէք ; ‖ Գործ. 20. 34. ; 1. Կորն. 4. 12. ; 1. Թեսա. 2. 9. ; ‖ Գաղատ. 6. 9.]

կիջիք ընդ նմա՝ զի պատկառեսցի։ 15 *Բայց մի իբրև զթշնամի համարիջիք՝ այլ խրատեսջիք իբրև զեղբայր։ 16 *Եւ ինքն Տէր խաղաղութեան՝ տացէ ձեզ զխաղաղութիւն յամ ժամ, յամ եղս։ Տ՟ր ընդ ամենեսին ընդ ձեզ։ 17 *Ողջոյն իմոյ ձեռին պօղոսի է, որ է նշանակ յամենայն թուղթս, այսպէս գրեմ։ 18 *Շնորհք Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի ընդ ամենեսին ձեզ. Ամէն։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ՏԻՄՕԹԷՈՍ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ։

## Գլուխ Առաջներորդ։



1 ՕՂՈՍ ԱՌԱՔԵԱԼ Յ՟ի Ք՟ի ը՟ստ հրամանի փրկչին մերոյ Ա՟յ՝ և Ք՟ի Յ՟ի յուսոյն մերոյ։ 2 *Տիմոթեայ որդւոյ սիրելւոյ հաւատովք։ *Շնորհք՝ ողորմութիւն և խաղաղութիւն յԱ՟յ Հօրէ և 'ի Տ՟է մերմէ՝ Յ՟է Ք՟է։ 3 *Որպէս աղաչեցի զքեզ կալ յեփեսոս՝ մինչ երթայի 'ի Մակեդոնիա. զի պատուիրեսցես ոմանց չլինել օտարուսուցանս։ 4 *Եւ չհայիլ յառասպելս՝ 'ի տոհմաթիւս անհնարս։ որք մանաւանդ խնդիրս յուզեն, և ոչ զտնտեսութիւն Ա՟յ հաւատովք։ 5 *Բանզի գլուխ պատուիրանին սէր է, 'ի սուրբ սրտէ՝ և 'ի միտաց բարեաց՝ և յանկեղծաւոր հաւատոց։ 6 *Յորոց ոմանք վրիպեցան՝ խոտորեալք յունայնութիւն բանից։ 7 *Կամին լինել վարդապետք օրինաց. ինքեանք ոչ իմանան զինչ խօսին, և ոչ վ՟ն որոյ պնդեալն են։ 8 *Գիտեմք՝ եթէ բարւոք են օրէնք՝ եթէ ոք զնոսա օրինօքն կրեսցէ։ 9 *Բայց զայս գիտասցէ՝ զի 'ի վերայ արդարոց օրէնք ոչ կան, այլ 'ի վ՟ր անօրինաց՝ և անհնազանդից. ամպարշտաց՝ և մեղաւորաց. անսրբոց՝ և պղծոց. զհայր և զմայր անարգողաց. մարդասպանաց։ 10 *Պոռնկաց. արուագիտաց. մարդելուզաց. ստոց. ստերդմնոց. և եթէ այլ ինչ իցէ հակառակ ողջամիտ վարդապետութեանս։ 11 *Որ ըստ աւետարանի փառաց երանելւոյն Ա՟յ է. որոյ եղէ ես հաւատարիմ։ 12 *Շնորհ ունիմ այնմիկ, որ զօրացոյց զիս 'ի Ք՟ս Յ՟ս 'ի Տ՟ր մեր։ զի հաւատարիմ համարեցաւ զիս. կարգել 'ի սպասաւորութիւն։ 13 *Որ յառաջագոյն հայհոյիչն էի, և հալածիչ, և թշնամանիչ. այլ գտի զողորմութիւն. զի զայն յանգիտութեան և յանհաւատութեան գործէի։ 14 *Եւ առաւել եղեն շնորհք Տ՟ն մերոյ հաւատովքն և սիրովն որ 'ի Ք՟ս Յ՟ս։ 15 *Հաւատարիմ է բանս՝ և ա՟մ ընդունելութեան արժանի։ զի Յ՟ս Ք՟ս եկն յաշխարհ փրկել զմեղաւորս՝ որոց գլուխն ես եմ։ 16 *Այլ վասն այնորիկ գտի զողորմութիւն, զի նախ յիս եցոյց Յ՟ս Ք՟ս զա՟մ զերկայնմտութիւն՝ յօրինակ այնոցիկ՝ որք հաւատալոցն իցեն 'ի նա՝ 'ի կեանսն յաւիտենից։ 17 *Այլ թագաւորին յաւիտենից՝ անեղծի, և աներևութի, միոյն Ա՟յ՝ փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ 18 *Զայս պատուիրան աւանդեմ քեզ՝ որդեակ իմ տիմոթէոս, ըստ կանխելոյ 'ի քեզ մարգարէութեանցն. զի դու զինուորիցես նոքօք զգեղեցիկ զինուորութիւն։ 19 *Ունիցիս զհաւատս սրբօք մտօք՝ զոր ոմանց մերժեալ յանձանց իւրեանց՝ նաւաբեկեցան 'ի հաւատս։ 20 *Որոց սակի են հիմենոս՝ և աղեքսանդրոս։ զորս մատնեցի սատանայի, զի խրատեսցին չհայհոյել։

Գործ. 16. 1.
Ա Տիմ. 4. 7.
Բ Տիմ. 2. 23.
Տիտոս. 3. 9.
Հռով. 7. 12.
Մատ. 9. 13.
Մարկ. 2. 17.

## Գլ. Բ։

1 Եւ արդ՝ աղաչեմ, նախ քան զա՟մ առնել աղօթս՝ խնդրուածս՝ պաղատանս, գոհութիւնս վասն ա՟մ մարդկան։ 2 *Վասն թագաւորաց և ա՟մ իշխանաց. զի խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեսցուք զկեանս մեր, ա՟մ Ա՟ծպաշտութեամբ և սրբութեամբ։ 3 *Զի այն է բարի և ընդունելի առաջի փրկչին մերոյ Ա՟յ։ 4 *Որ զա՟մ մարդիկ կամի զի կեցցեն՝ և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն։ 5 *Բանզի մի է Ա՟ծ, և մի միջնորդ Ա՟յ և մարդկան՝ մարդն Յ՟ս Ք՟ս։ 6 *Որ ետ զանձն փր-

փրկանս ընդ ամենեցուն՝ վկայութիւն ժամանակաց իւրոց։ *7 Յոր եդայ ես քարոզ և առաքեալ (զճշմարիտն ասեմ ՚ի Ք.Ս, և ոչ ստեմ) եղէ վարդապետ հեթանոսաց հաւատովք և ճշմարտութեամբ։ *8 Կամիմ, զի արք կայցեն յաղօթս յամ տեղիս․ բառնայցեն զսուրբ ձեռս ՚ի վեր առանց բարկութեան և երկմտութեան։ *9 ‖ Նոյնպէս և կանայք ՚ի զարդ խոնարհութեան ականածութեամբ և զգաստութեամբ զարդարել զանձինս․ մի ՚ի հիւս ոսկեմանս ընդելուզեալս մարգարտով․ կամ ՚ի հանդերձս պաճուճեալս։ *10 Այլ որպէս վայելէ կանանց զԱ.Ծպաշտութիւն յանձնառելոց գործօք բարութեան։ *11 Կին մարդ ցածութեամբ ուսցի ամ հնազանդութեամբ։ *12 ‖ Այլ ուսուցանել կնոջ մարդոյ ոչ հրամայեմ, և ոչ ձոխաբան լինել քան զայր մարդ․ այլ ՚ի լռութեան կալ։ *13 ‖ Զի ադամ նախ ստեղծաւ՝ և ապա եւայ։ *14 ‖ Եւ ադամ ոչ պատրեցաւ՝ այլ կինն պատրեցաւ, և յանցեաւ։ *15 Բայց կեցցէ վասն որդեծնութեանն՝ եթէ կացցեն ՚ի հաւատս՝ և ՚ի սէր, և ՚ի սրբութեան պարկեշտութեան։

‖ 1. Պետ. 3. 3. — ‖ 1. Կորն. 14. 34. — Ծննդ. 1. 27. — Ծննդ. 3. 6.

## ԳԼ: Գ

Հաւատարիմ է բանս․ եթէ ոք եպիսկոպոսութեան ցանկայ՝ բարւոյ գործոյ ցանկայ։ *2 ‖ Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել․ միոյ կնոջ այր, հեզ՝ ցած՝ պարկեշտ՝ հիւրասէր՝ ուսուցիչ։ *3 Մի թշնամանօղ․ մի հարկանօղ՝ այլ հանդարտ․ մի կռուօղ՝ մի արծաթասէր։ *4 Զի իւրում տանն բուն բարւոք վերակացու լեալ իցէ․ որդեակս ունիցի, որք ՚ի հնազանդութեան կայցեն, ամ պարկեշտութեամբ։ *5 Ապա եթէ ոք իւրում տանն վերակացու չգիտիցէ լինել, զիարդ եկեղեցւոյ Ա.Ծ խնամակալ լինիցի։ *6 Մի մատաղատունկ․ զի մի հպարտացեալ ՚ի դատաստանս սատանայի անկանիցի։ *7 Այլ պարտ է նմա զվկայութիւն բարի և յարտաքնոցն ունել․ զի մի ՚ի նախատինս անկանիցի՝ և յորոգայթս սատանայի։ *8 Նոյնպէս և զսարկաւագունս պարկեշտս․ մի երկբանս, մի գինեսէրս, մի զօշաքաղս։ *9 Այլ ունիցին զխորհուրդս հաւատոյ սուրբ մտօք։ *10 Նոքեանք նախ փորձեսցին․ և ապայ ՚ի պաշտօնն մատիցեն, զի անարատք իցեն։ *11 Նոյնպէս և կանայք նոցա պարկեշտք․ մի չարախօսք․ հեզք՝ հաւատարիմք յամի։ *12 Սարկաւագունք լինիցին միոյ կնոջ արք․ որք որդւոց իւրեանց բարւոք վերակացուք լեալք իցեն, և տանց իւրեանց։ *13 Զի որք բարւոք պաշտիցեն, զաստիճան բարի անձանց իւրեանց շահին․ և զբազում համարձակութիւն ՚ի հաւատն, որ ՚ի Ք.Ս Յ.Ս։ *14 Զայս գրեմ առ քեզ՝ զի ակնունիմ ՚ի մօտոյ գալ։ *15 Ապա թէ յամեցից՝ զի գիտասցես, թէ որպէս պարտ իցէ քեզ ՚ի տան Ա.Ծ շրջել․ որ է եկեղեցի Ա.Ծ կենդանւոյ, սիւն և հաստատութիւն ճշմարտութեան։ *16 Եւ յայտնի իսկ մեծ է խորհուրդն Ա.Ծպաշտութեան․ որ երևեցաւ մարմնով արդարացաւ հոգւով յայտնեցաւ հրեշտակաց՝ քարոզեցաւ ՚ի հեթանոսս՝ հաւատարիմ եղև յաշխարհի՝ և վերացաւ փառօք։

‖ Տիտ. 1. 7. — Գաղ. — Եղ.

## ԳԼ: Դ

Այլ հոգին սուրբ յայտնապէս ասէ․ թէ ՚ի ‖ ժամանակս յետինս՝ քակտեսցին ոմանք ՚ի հաւատոցն․ և հայեսցին յոյս մոլորութեան, և ՚ի վարդապետութիւնս դիւաց։ *2 Կեղծաւորութեամբ, ստաբանք, խարեալք իւրեանց խղճիւ մտաց։ *3 Որք արգելուցուն յամուսնանալոյ․ և մեկնիցեն ՚ի կերակրոյ՝ զոր Ա.Ծ հաստատեաց ՚ի վայելել հաւատացելոց․ և այնոցիկ՝ ոյք հաւատեալք իցեն ՚ի ճշմարտութեան վերայ։ *4 Զի ամ արարածք Ա.Ծ՝ բարիք են․ և ոչ ինչ ՚ի նոսա խոտան․ մանաւանդ որք գոհութեամբ ընդունիցին։ *5 Զի սրբի բանիւն Ա.Ծ, և աղօթիւք։ *6 Զայս խրատ տուեալ եղբարց՝ բարւոք պաշտօնեայ լինիցիս Ք.Ի Յ.Ի․ սնանիցիս բանիւք հաւատոց, և բարւոք վարդապետութեամբ․ զորոյ զհետ իսկ եղեր։ *7 ‖ Այլ ՚ի պիղծ բանից և յառասպելաց պառաւանց հրաժարեսջիր․ բայց կրթեա զանձն քո յԱ.Ծպաշտութիւն։ *8 Զի մարմնոյ կրթութիւն առ սակաւ ինչ օգտակար է․ բայց Ա.Ծպաշտութիւն առ ամ ինչ օգտակար է․ և զաւետիս կենաց ունի՝ զարդիս և զհանդերձելոցն։ *9 Հաւատարիմ է բանս՝ և ամ ընդունելութեան արժանի։ *10 Զի ՚ի սոյն իսկ վաստակիմք՝ և նախատինս յանձն առնումք․ զի յուսացեալ եմք յԱ.Ծ կենդանի, որ է փրկիչ ամ մարդկան, մանաւանդ հաւատացելոց։ *11 Պատուէր տացիր զայդ՝ և ուսուցանիջիր։ *12 Զի մի ոք զքո մանկութիւնդ արհամարհիցէ․ այլ օրինակ լինիջիր հաւատացելոց՝ բանիւք, գնացիւք, սիրով, հաւատով, սրբութեամբ։ *13 Մինչև գամ ես, միտ դիր ընթերցուածոց մխիթարութեան՝ և վարդապետութեան։ *14 Մի անփոյթ առներ

‖ 2. Տիմ. 3. 1. — 2. Պետ. 3. 3. — Յուդ. 18. — ‖ [illegible] 1. 4. — 2. Տիմ. 2. 23. — Տիտ. 3. 9.

զշնորհացդ՝ որք 'ի քեզ են. որք տուան քեզ մարգարէութեամբ 'ի ձեռնադրութենէ երիցութեան: 15 *Զայդ խորհեաց՝ և 'ի դոյն կանխեսջիր. զի քո յառաջադիմութիւնդ ամենեցուն յայտնի լիցի: 16 *Զգոյշ լինիջիր անձին և վարդապետութեան՝ և 'ի դմին յամեսջիր: զայդ եթէ առնիցես՝ և զանձն ապրեցուսցես, և զայնոսիկ՝ որք քեզն լսիցեն:

## Գլ. Ե.

1 Ծերոն մի՛ պատուհասեսցես՝ այլ մխիթարեսջիր իբրև զհայր: զերիտասարդս իբրև զեղբարս: 2 *Զպառաւունս իբրև զմարս. զմանկամարդս իբրև զքորս ամ սրբութեամբ: 3 *Զայրիս պատուեա՛, որք ստոյգ այրիք իցեն: 4 *Ապա թէ ոք այրի, որդիս և թոռունս ունիցի, ուսանիցին նախ իւրեանց տանց բարիս առնել՝ և զփոխարէնս հատուցանել ծնողացն: զի այն է բարի, և ընդունելի առաջի Այ: 5 *Իսկ որ ճշմարտիւ այրին իցէ, և մենացեալ՝ յուսացեալ յԱծ, և կանխեալ յաղօթս և 'ի խնդրուածս զցայգ և զցերեկ: 6 *Իսկ որ գիրգ այրին է՝ կենդանւոյն մեռեալ է: 7 *Զայս պատուիրեա՛, զի անարատք իցեն: 8 *Իսկ եթէ ոք իւրոց, և մանաւանդ ընտանեացն խնամ ոչ տանիցի, 'ի հաւատոյն ուրացեալ է՝ և չարեաց քան զանհաւատն է: 9 *Այրի ընդ այրիս անուանեսցի, որ չիցէ պակաս 'ի վաթսուն ամենից, միոյ առն կին լեալ: 10 *Ու՛ր 'ի գործս բարիս վկայեալ. եթէ մանկունս սնուցեալ իցէ, եթէ զհիւրս ընկալեալ իցէ, եթէ զսրբոց զոտս լուացեալ իցէ, եթէ նեղելոց բաւական լեալ իցէ, եթէ ամ գործոյ բարեաց զհետ երթեալ իցէ: 11 *Այլ 'ի մանկամարդաց այրեացն հրաժարեա՛: զի յորժամ խայտան զՔին՝ ամուսնանալ կամին: 12 *Իսկ զդատաստանս ընդունին. զի զառաջին հաւատսն արհամարհեցին: 13 *Միանգամայն և դատարկանձունք ուսանին. շրջօղք տանէ 'ի տուն: և ոչ միայն դատարկք, այլ և փաքուսք և հետաքրքիրք: և խօսին՝ որինչ ոչ է պիտոյ: 14 *Կամիմ մանկամարդացդ ամուսնանալ. որդիս ծնանիլ. տնարարս լինիլ: և մի՛ ինչ պատճառս տալ հակառակորդին 'ի հայհոյութեան յաղագս: 15 *Զի անդէն իսկ ոմանք խոտորեցան զկնի սատանայի: 16 *Եթէ ոք հաւատացեալ՝ այրիս ունիցի՝ բաւական լիցի նց, և մի՛ ծանրասցի եկեղեցւոյն. զի ճշմարիտ այրեացն բաւական լիցի: 17 *Որք բարւոք վերակացուք լինին երիցունք՝ կրկին պատուոյ արժանի եղիցին. մանաւանդ որք աշխատիցին բանիւ և վարդապետութեամբ: 18 *Զի ասէ գիր. Մի՛ կապեսցես զցռուկ եզինկալնոյ: և արժանի է մշակն վարձու իւրոյ: 19 *Զերիցուէ զչարախօսութիւն մի՛ ընդունիցիս: բայց եթէ երկուք կամ երիւք վկայիւք: 20 *Իսկ որք մեղանչենն՝ առաջի ամենեցուն յանդիմանեա՛, զի և այլքն երկիցեն: 21 *Վկայութիւն դնեմ առաջի Այ, և Յի Քի, և ընտրելոց հրեշտակաց, զի զայդ պահեսցես առանց միտահաճութեան: մի՛ ինչ առնել աչառանօք: 22 *Ձեռս վաղվաղակի 'յումեք վերայ մի՛ դնիցես. և մի՛ կցորդ լինիցիս մեղաց օտարաց: զանձն քո սբ պահեսջիր: 23 *Այսուհետև մի՛ ջուր ևեթ ըմպիցես՝ այլ սակաւիկ մի և գինի խառնեսջիր՝ վասն ստամոքսի և ստէպ հիւանդութեանց †: 24 *Են մարդք՝ որոց մեղքն յայտնի են՝ և յառաջագոյն հասեալ 'ի դատաստան. և են, որոց զկնի երթան: 25 *Նոյնպէս և բարի գործքն յայտնի են: և որք այլազգ ես ինչ իցեն՝ թաքչիլ ոչ կարեն:

## Գլ. Զ.

1 Որք միանգամ ընդ լծով ծառայութեան իցեն, զիւրաքանչիւր տեարս պատուոյ արժանի համարեսցին. զի մի՛ անունն Այ և վարդապետութիւն հայհոյեսցի: 2 *Իսկ որք հաւատացեալ տեարս ունիցին՝ մի՛ արհամարհեսցեն՝ զի եղբարք են. այլ առաւել ծառայեսցեն՝ զի հաւատացեալք են, և սիրունք: որք զբարերարութիւն յանձին ունիցին: զայս ուսուցանիջիր՝ և մխիթարեսջիր: 3 *Իսկ եթէ ոք այլազգ ինչ ուսուցանիցէ, և ոչ անսայցէ ողջմտութեան բանից Տն մերոյ Յի Քի: և ըստ ածպաշտութեան վարդապետութեանն: 4 *Այնպիսին հպարտացեալ է, և ոչինչ գիտէ: այլ տապի 'ի խնդիրս և 'ի բանս հակառակութեան: ուստի լինին նախանձ, հեռ, հայհոյութիւնք, կարծիք չարեաց: 5 *Խարդախութիւնք ապականելոց մտաց մարդկան, և օտարացելոց 'ի ճշմարտութենէ անտի, որք շահավաճառ համարին զածպաշտութիւն: բայց դու մերժիջիր յայնպիսեաց: 6 *Այլ շահավաճառ մեծ՝ ածպաշտութիւն է բաւականութեամբ հանդերձ: 7 *Զի ոչինչ բերաք յաշխարհ 8 և ոչ տանիլ ինչ կարասցուք: *Այլ ունիմք զկերակուր և զհանդերձս, և 9 այնու շատասցուք: *Իսկ որք կամին մե_

մեծանալ՝ անկանին 'ի փորձութիւն և յորոգայթս, և 'ի բազում ցանկութիւնս անմիտս և վնասակարս. որք ընկղմեն զմարդիկ 'ի սատակումն և 'ի կորուստ։ * Զի արմատ ամենեցուն չարեաց՝ արծաթսիրութիւն է։ որում ոմանց ցանկացեալ՝ վրիպեցան 'ի հաւատոցն, և զանձինս արկին ընդ բազում ցաւօք։ 10 * Այլ դու ով մարդ Այ, փախիր յայնցանէ. և երթ զհետ արդարութեան, աստուածպաշտութեան, հաւատոյ, սիրոյ, համբերութեան, հեզութեան։ 11 * Նա՛ մարտիր զբարւոք մարտն հաւատոյ. և բո՛ւռն հար զկենացն յաւիտենականաց՝ յոր կոչեցարն, և դաւանեցեր զբարւոք դաւանութիւն առաջի բազում վկայից։ 12 * Պատուիրեմ քեզ առաջի Այ, որ կենդանի առնէ զամ, և Յի Քի, որ վկայեաց ‖ առաջի Պոնտացւոյ Պիղատոսի զբարւոք դաւանութիւն։ 13 * Պահել քեզ զպատուիրանն անբիծ՝ անարատ, մինչև 'ի յայտնութիւն Տն մերոյ Յի Քի։ 14 * Զոր 15 յիւր ժամանակս ցուցցէ, ‖ երանելին և միայն հզօր. թագաւոր թագաւորաց. և Տր տերանց։ 16 * Որ միայն ունի զանմահութիւն բնակեալ 'ի լոյս անմատոյց։ ‖ զոր ոչ ո՛ք ետես 'ի մարդկանէ՝ և ո՛չ տեսանել կարող է։ որում պատիւ, և զօրութիւն յաւիտենական. ամէն։ 17 * Մեծատանց՝ որք են յայսմ աշխարհի՝ պատուէր տացես, մի՛ հպարտանալ՝ ‖ և մի՛ յուսալ 'ի մեծութիւն անստոյգ. այլ յԱծ † (որ տայ մեզ զամ առատապէս 'ի վայելել։) 18 * Զբարիս գործել՝ մեծանալ գործովք բարութեան, առատս, սիրունս՝ հաղորդս լինել։ 19 * Գանձել անձանց զհիմն բարի 'ի հանդերձեալսն. զի զբուռն հարկանիցեն զճշմարիտ կենացն։ 20 * Ով տիմոթէէ՝ պահեա՛ զաւանդն՝ խոտորեալ 'ի պղծոց՝ և 'ի նորաձայն բանից։ և 'ի հակառակութեանց՝ և 'ի մոլար անուն գիտութեանց։ 21 * Զոր ոմանց յանձն առեալ՝ վրիպեցան 'ի հաւատոց անտի։ Շնորհք ընդ քեզ։ Ամէն։

‖ Մատ. 27.11. Յովհ. 18. 33.37.
‖ Յայտ. 17. 14. և 19.16
‖ Յովհ. 1. 18. 1. Յովհ. 4.12.
‖ Ղուկ. 12.15.
† կեն_ դանի

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ ԵՐԿՐՈՐԴ։

Գլուխ Առաջին։



ՊՕՂՈՍ ԱՌԱՔԵԱԼ Յի Քի կամօքն Այ, ըստ աւետեաց կենացն՝ որ 'ի Քս Յս։ 2 * Տիմոթէեայ որդւոյ սիրելւոյ՝ շնորհք՝ ողորմութիւն, և խաղաղութիւն յԱյ Հօրէ՝ և 'ի Քէ Յէ Տէ մերմէ։ 3 * Շնորհս ունիմ Այ, զոր պաշտեմն 'ի նախնեաց մտօք սրբովք. իբրև զի անպակաս ունիմ զքեն յիշատակ յաղօթս իմ, զցայգ և զցերեկ։ 4 * Յանկացեալ եմ տեսանել զքեզ յիշատակել զարտասուսն քո՝ զի լցայց ուրախութեամբ։ 5 * Զմտաւ ածեալ զանխիղճ հաւատոն՝ որ են 'ի քեզ. որ յառաջագոյն բնակեցաւ 'ի հանւոյ քում Լաւոդեայ, և 'ի մօր քում Եւնիկեայ. հաստատեալ եմ՝ թէ և 'ի քեզ է։ 6 * Վասն որոյ յիշեցուցանեմ քեզ արծարծել զշնորհսն Այ՝ որ են 'ի քեզ 'ի ձեռնադրութենէ իմմէ։ 7 * ‖ Զի ոչ ետ մեզ Ածծ զհոգի վհատութեան, այլ զօրութեան և սիրոյ՝ և զգաստութեան։ 8 * Մի՛ այսուհետև ամօթ համարիցիս զվկայութիւն Տն մերոյ՝ և մի՛ զիս զկապեալս նորա։ այլ կցո՛րդ լեր չարչարանաց աւետարանին ըստ զօրութեանն Այ։ 9 * Որ փրկեաց զմեզ, և կոչեաց 'ի կոչումն սրբ։ ‖ ո՛չ ըստ գործոց մերոց՝ այլ ըստ իւրում յառաջադրութեանն, և շնորհաց, որ տուաւ մեզ 'ի Քս Յս, յառաջ քան զժամանակս յաւիտենից։ 10 * Բայց յայտնեցաւ այժմիկ յերևել փրկչին մերոյ Յի Քի. որ խափանեաց զմահ՝ և լուսաւոր արար զկեանս, և զանեղծութիւն 'ի ձեռն աւետարանին։ 11 * ‖ Որոյ եդայ ես քարոզ՝ և առաքեալ՝ 12 և վարդապետ հեթանոսաց։ * Վասն որոյ և զայս չարչարանս կրեմ, այլ ոչ ինչ ամօթ համարիմ. քանզի գիտեմ, յո՛ հաւատացեալն եմ։ և հաստատեալ եմ, թէ կարօղ է զաւանդն իմ պահել 13 յօրն յայն։ * Ունիցիս օրինակ ողջմտութեան բանիցն, զոր յինէն լուար հա_

յիշատա_ կեալ
‖ Հռովմ. 8.15.
‖ Տիտ. 3. 5.
‖ 1. Տիմ. 2. 7.

հաւատովք՝ և սիրով 'ի Ք՟ս Յ՟ս։ 14 * Զբարւոք աւանդն պահեսջիր՝ 'ի ձեռն Հոգւոյն սրբոյ 'ի մեզ բնակելոյ։ 15 * Զայս գիտասջիր՝ զի մեկնեցան 'ի մէնջ ամենեքեան՝ որք էին յԱսիա. որոց սակի են Փիգեղոս և Հերմոգինէս։ 16 * Տացէ Տ՟ր ողորմութիւն տանն ‖ Ոնեսիփորայ. զի բազում անգամ հանգոյց զիս և զկապանս իմ ոչ ամօթ համարեցաւ։ 17 * Այլ իբրև եկն 'ի Հռոմ, պնտագոյնս խնդրեաց զիս՝ և եգիտ։ 18 * Տացէ նմա Տ՟ր ողորմութիւն գտանել 'ի Տ՟է յաւուր յայնմիկ. և որչափ ինչ միանգամ յԵփեսոս սպաս կալաւ ինձ, զայն դու ինքնին իսկ քաջ գիտես։

‖ Ստոր. 4. 19.

## ԳԼ. Բ.

1 Այլ դու որդեակ իմ, զօրացիր շնորհօքն՝ որ 'ի Ք՟ս Յ՟ս։ 2 * Եւ զոր լուար յինէն բազում վկայիւք՝ զայն աւանդեսցես հաւատարիմ մարդոց՝ որք բաւական իցեն և զայլս ուսուցանել։ 3 * Վշտակից լեր իբրև զբարւոք զինուոր Ք՟ի Յ՟ի։ 4 * Ոչ ոք զինուորեալ ասպէն ընդ կեանս աշխարհիս պատաղի, եթէ զօրավարին հաճոյ լինիցի։ 5 * Եւ եթէ մարտիկ ոք իցէ՝ ոչ պսակի՝ եթէ ոչ ըստ օրինին մարտիցի։ 6 * Եւ հողագործին աշխատելոյ պարտ է նախ 'ի պտղոյն վայելել։ 7 * Իմա զինչ ասեմս. տացէ քեզ Տէր զիմաստութիւն յամի։ 8 * Յիշեա զՅ՟ս Ք՟ս յարուցեալ 'ի մեռելոց 'ի զաւակէ Դաւթի՝ ըստ աւետարանիս իմոյ։ 9 * Յորում չարչարիմ կապանօք չափ իբրև զչարագործ. այլ բանն Ա՟յ ոչ եթէ կապեալ իցէ։ 10 * Վասն այնորիկ ամ՟ համբերեմ վասն ընտրելոցն, զի և նոքա փրկութեան հասանիցեն, որ 'ի Ք՟ս Յ՟ս երկնաւոր փառօքն հանդերձ։ 11 * Հաւատարիմ է բանս. զի եթէ ընդ նմա մեռաք՝ ընդ նմին և կեցցուք։ 12 * Եթէ համբերեմք, ընդ նմին և թագաւորեսցուք. ‖ և եթէ ուրանամք՝ և նա ուրանայ զմեզ։ 13 * ‖ Եւ եթէ չհաւատամք, նա հաւատարիմ մնայ. ուրանալ զանձն իւր ոչ կարէ։ 14 * Զայս յուշ արասջիր վկայութիւն եդեալ առաջի Ա՟յ. մի բանակռուել լինիլ յոչինչ պէտս 'ի կործանումն լսողաց։ 15 * Փութասջիր զանձն քո ընտիր կացուցանել առաջի Ա՟յ. մշակ առանց ամօթոյ. ուղիղ հատանել զբանն ճշմարտութեան։ 16 * Այլ 'ի պղծոց՝ և 'ի սնոտի խօսից մերժիջիր. զի առաւել յառաջ գայցեն յամբարշտութիւն։ 17 * Եւ բանք նոցա իբրև զքաղցկեղ ճարակ գտանիցեն. որոց սակի են Հիմենէնոս՝ և Փիղետոս։ 18 * Որք վրիպեցան 'ի ճշմարտութենէ, և ասեն. եթէ յարութիւն մեռելոց արդէն իսկ եղեալ է. և կործանեն զհաւատս ոմանց։ 19 * Այլ հաստատուն հիմն Ա՟յ կայ՝ և ունի զկնիքս զայս. եթէ ծանեաւ Տ՟ր զայնոսիկ՝ որք իւրքն են. և 'ի բաց լիցի յանիրաւութենէ, ամ՟ որ անուանէ զանուն Տ՟ն։ 20 * Այլ 'ի տան մեծի ոչ են միայն անօթք ոսկեղէնք՝ և արծաթեղէնք. այլ և փայտեղէնք՝ և խեցեղէնք. են՝ որք 'ի պատուի են. և են որք յանարգութեան։ 21 * Եթէ ոք սրբեսցէ զանձն իւր յայնպիսեաց անտի, եղիցի անօթ պատուական՝ սրբեալ և պիտանի Տ՟ն իւրում՝ յամ՟ գործս բարութեան պատրաստեալ։ 22 * Այլ յերիտասարդական ցանկութեանց փախիր. և երթ զհետ արդարութեան, զհաւատոյ, զսիրոյ, զխաղաղութեան, զսրբութեան, ընդ այնոսիկ, որք կարդան զանուն Տ՟ն ս՟ք սրտիւ։ 23 * ‖ Այլ 'ի յիմար և յանխրատ խնդրոց հրաժարեաց. գիտասջիր թէ անտի ծնանին կռիւք։ 24 * Բայց ծառայի Տ՟ն ոչ է պարտ կռուել՝ այլ հեզ լինիլ առ ամենեսին, ուսուցիչ, անոխակալ։ 25 * Հանդարտութեամբ խրատել զհակառակօղսն. թերևս տացէ նոցա Ա՟ծ զապաշխարութիւն 'ի գիտութիւն ճշմարտութեան։ 26 * Եւ սթափեսցին յորոգայթից սատանայի, որսացեալք 'ի նմանէ 'ի նորա կամս։

‖ Մատթ. 10. 33. Մարկ. 8. 38.
‖ Հռոմ. 3. 3.
‖ 1. Տիմ. 1. 4. և 7. Տիտ. 3. 9.

## ԳԼ. Գ.

1 Զայս գիտասջիր՝ թէ ‖ յաւուրս յետինս եկեսցեն ժամանակք չարք։ 2 * Զի եղիցին մարդիկք անձնասէրք, արծաթասէրք, հպարտք, ամբարտաւանք, հայհոյիչք, անհաւանք ծնողաց, անշնորհք, անսուրբք։ 3 * Աննուէրք, անգութք, բանսարկուք, անժոյժք, վէսք, անբարեսէրք, 4 * Մատնիչք, յանդգունք, ամբարհաւաճք, ցանկասէրք մանաւանդ՝ քան աստուածասէրք. 5 * Որք ունիցին զկերպարանս աստուածպաշտութեան, և 'ի զօրութենէ անտի նորա ուրացեալք իցեն. և խորշիջիր 'ի նոցանէ։ 6 * Վասնզի 'ի նոցանէ են, որք մտանեն տանէ 'ի տուն. և գերեն զկանայս շեղջակուտեալս մեղօք, և վարեալս 'ի պէսպէս ցանկութիւնս։ 7 * Որք յամենայն ժամ ուսանին, և երբեք 'ի գիտութիւն ճշմարտութեան ոչ հասանին։ 8 * Այլ որպէս ‖ Յանէսն, և Յամբրէս հակառակ կացին Մովսէսի. նոյնպէս և սոքա հակառակ կան ճշմարտութեան. մարդք ապականեալք մտօք՝ անպիտանք 'ի հաւատս։ 9 * Այլ ոչ երբեք գայ-

‖ 1. Տիմ. 4. 1. 2. Պետ. 3. 3. Յուդ. 18.
‖ Ելից 7. 11.

գայցեն յառաջ 'ի լաւ անդր ։ քանզի անմտութիւն սոցա յայտնի լինիցի ամենեցուն՝ որպէս և նոցայն իսկ եղև ։
10 *Այլ դու զհետ եկիր վարդապետութեան իմոյ, առաջնորդութեան, յօժարութեան, հաւատոյ, երկայնմտութեան, սիրոյ, համբերութեան, 11 * Հալածանաց, չարչարանաց, որպիսիք եղեն ինձ 'յանտիոք՝ և 'յիկոնիոն, և 'ի լիւստրա ։ որպիսի հալածանաց համբերի . և յամենայնէ փրկեաց զիս Տր ։ 12 *Այլ ամենեքեան, որք կամիցին ածպաշտութեամբ կեալ 'ի Քի Յի 'ի հալածանս կայցեն ։ 13 *Այլ մարդք չարք, և կախարդք՝ յառաջ եկեսցեն 'ի չար անդր ։ մոլորեալք՝ և մոլորեցուցանիցեն ։ 14 *Այլ դու հաստատուն կաց՝ յորս ուսարդ՝ և հաւատարիմ եղեր ։ գիտես, ուստի ուսար ։
15 * Զի 'ի մանկութենէ զգիրս սուրբս գիտես . որք կարողք են իմաստուն առնել զքեզ 'ի փրկութիւն, 'ի ձեռն հաւատոց՝ որ 'ի Քի Յի ։ 16 *Ամ գիրք Այ շունչք և օգտակարք, 'ի վարդապետութիւն են՝ և յանդիմանութիւն, և յուղղութիւն՝ և 'ի խրատ արդարութեան ։ 17 * Զի կատարեալ իցէ մարդն Այ՝ յամ գործս բարութեան հաստատեալ ։

2. Պետ. 1. 20. Են օգտակար 'ի վարդապետութիւն, և 'ի յանդիմանութիւն,

ԳԼ. Դ.

1 Զայս վկայութիւն դնեմ առաջի Այ՝ և Յի Քի, որ դատելոց է զկենդանիս և զմեռեալս, 'ի յայտնութեան իւրում և յարքայութեան ։
2 *Դու դու քարոզեա զբանն ։ հաս 'ի վր ժամու և տարաժամու ։ յանդիմանեա՛, սաստեա՛, մխիթարեա՛ ամ երկայնմտութբ և վարդապետութբ ։ 3 * Քանզի եկեսցէ ժամանակ՝ զի ողջմտութեան վարդապետութեանն ոչ անսայցեն . այլ ըստ իւրաքանչիւրոց ցանկութեանց կուտեսցեն իւրեանց վարդապետս՝ ըստ մարմաջելոյ լսելեաց իւրեանց ։
4 *Եւ 'ի ճշմարտութենէ անտի դարձուցանիցեն զլսելիս՝ և յառասպելս կործանեսցին ։ 5 *Այլ դու զուարթ կաց . յամի չգնեաց . զգործս աւետարանչի գործեա՛ ։ զպաշտօն քո կատարեա՛-

[illegible]

6 կալ ։ * Զի ես այսուհետև նուիրեալ եմ ։ և ժամանակ դարձի իմոյ հասեալ կայ ։ 7 * Զբարւոք պատերազմ պատերազմեցայ . զընթացսն կատարեցի . 8 զհաւատսն պահեցի ։ *Այսուհետև կայ՝ և մնայ ինձ արդարութեան պսակն, զոր հատուսցէ ինձ Տր յաւուր յայնմիկ արդար դատաւորն ։ և ոչ միայն ինձ, այլ և ամենեցուն, որք սիրեցին զյայտնութիւն նորա ։ փութասջիր գալ առ իս վաղվաղակի ։ 9 * Զի դեմաս եթող զիս՝ և սիրեաց զաշխարհ . և գնաց 'ի թեսաղոնիկէ ։
10 * Կրեսկէս 'ի գաղատիա ։ տիտոս 'ի դաղմատիա ։ 11 * Ղուկաս միայն է ընդ իս ։ զմարկոս առեալ՝ ընդ քեզ ածիցես՝ զի է ինձ պիտանի 'ի սպասաւորութիւն ։ Կողոս. 4. 24.
12 * Զտիքիկոս առաքեցի յեփեսոս ։
13 * Զփիլոնն թողի 'ի տրովադա առ կարպոսի ։ յորժամ գայցես, բերջիր և զգիրսն . մանաւանդ զմատեանսն ։
14 * Աղեքսանդրոս դարբին բազում չարչարանս եցոյց ինձ . հատուսցէ նմա 15 Տր ըստ գործոց նր ։ * Յորմէ և դու անձնապահ լինիջիր . զի շատ հակառակ 16 եկաց բանից իմոց ։ * Յառաջնում ատենին ոչ ոք ինձ 'ի թիկունս եկաց ։ այլ ամենեքին թողին զիս ։ մի 17 համարեսցի նոցա այն ։ * Այլ Տէր օգնեաց ինձ, և զօրացոյց զիս . զի ինև քարոզութիւնն հաստատեսցի . և լուիցեն ամենայն հեթանոսք ։ և ապրեցայ ես 'ի բերանոյ առիւծուն ։
18 *Փրկեսցէ զիս Տր յամ գործոց չարաց ։ և զերծուսցէ զիս յարքայութիւն իւր՝ որ յերկինս է ։ որում փառք յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։
19 * Ողջոյն տաջիր պրիսկեայ՝ և ակիւղեայ ։ և ոնեսիփորայ տանն ։ Վեր. 1. 16.
20 * Երաստոս մնաց 'ի կորնթոս ։ զտրոփիմոս թողի 'ի մելիտոս հիւանդագին ։ 21 * Փութասջիր յառաջ քան զձմեռն գալ ։ ողջոյն տան քեզ՝ եւբուղոս, և պուդէս . և լինոս, և կղօդիա՝ 22 և եղբարք ամենեքեան ։ * Տր Յս Քս ընդ ոգւոյդ քում ։ Շնորհք ընդ քեզ ։ Ամէն ։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ԱՌ ՏԻՏՈՍ.

## Գլուխ Առաջներորդ:

1 ՊՕՂՈՍ ԾԱՌԱՅ ԱՅ և առաքեալ Յի Քի, ըստ հաւատոյ ընտրելոցն Այ, և 'ի գիտութիւն ճշմարտութեան որ ըստ Այ պաշտութեանն է: 2 * Յուսով կենացն յաւիտենից, զոր խոստացաւ անսուտն Այ յառաջ քան զժամանակս յաւիտենից: 3 * Բայց յայտնեաց իւրովք ժամանակօք զբանն իւր քարոզութեամբ. որոյ եղէ ես հաւատարիմ ըստ հրամանի փրկչին մերոյ Այ: 4 * Տիտոսի որդւոյ սիրելւոյ ըստ հասարակաց հաւատոյ. Շնորհք՝ և խաղաղութիւն յԱյ Հօրէ, և 'ի Քէ Յէ փրկչէ մերմէ: 5 * Վասն այնորիկ թողի զքեզ 'ի Կրետէ՝, զի զորինչ միանգամ պակաս իցէ՝ ուղղեսցես: և կացուսցես ըստ քաղաքաց երիցունս՝ ոպ և ես քեզ պատուիրեցի: 6 * Եթէ ոք անարատ իցէ, միոյ կնոջ այր: որդեակս ունիցի հաւատացեալս՝ և ոչ յամբաստանութիւն անառակութեան, կամ անհնազանդս: 7 *‖ Զի պարտ է եպիսկոպոսին անարատ լինել՝ ոպ Այ տնտեսի. մի յանդուգն. մի բարկացօղ, մի թշնամանօղ. մի հարկանօղ. մի զօշաքաղ: 8 * Այլ հիւրասէր, բարեսէր, զգօն, արդար, սուրբ, ժուժկալ: 9 * Մերձակացու լինել հաւատարիմ բանին վարդապետութեան. զի կարօղ իցէ մխիթարել ողջմտութեամբ վարդապետութեանն. և զհակառակորդսն կշտամբել: 10 * Քանզի բազումք են անհնազանդք՝ զրախօսք՝ և մտախաբք. մանաւանդ որք 'ի թլփատութենէ անտի են: 11 * Զորս պարտ է ըմբերանել: որք զամ տունս կործանեն, և ուսուցանեն՝ զոր չէ արժան՝ վասն զօշաքաղութեան: 12 * Ասաց ոմն 'ի նոցանէ՝ իւրեանց իսկ մարգարէ: Կրետացիք հանապազասուտք, չարաճճիք, դատարկապորտք: 13 * Վկայ ստոյգ է վկայութիւնս այս: վասն որոյ կշտամբեսցես զնոսա խստագոյնս, զի առողջասցին 'ի հաւատս: 14 * Եւ մի հայեսցին 'ի հրէական առասպելս, և 'ի պատուէրս մարդկան դառնալոցն 'ի ճշմարտութենէ: 15 *‖ Ամենայն ինչ սուրբ է սրբոց՝ բայց պղծոցն և անհաւատից՝ ոչինչ է սուրբ: այլ պղծեալ են միտք և խորհուրդք նոցա: 16 * Խոստանան գիտել զԱծ, և գործովք իւրեանց ուրանան: պիղծք և անհաւանք՝ և յամ գործս բարեաց անպիտանք:

‖ 1. Տիմ. 3. 2.

‖ Հռով. 14. 20.

## Գլ. Բ.

1 Այլ դու խօսեաց՝ որինչ վայելէ ողջամիտ վարդապետութեանդ: 2 * Ծերոց զգաստս լինել. պարկեշտս, ցածունս, ողջամիտս 'ի հաւատս, 'ի սէր, 'ի համբերութեան, 'ի ժուժկալութեան: 3 * Պառաւանց նոյնպէս 'ի զգաստութեան, 'ի սուրբ վայելչութեան, մի բանսարկուս, մի գինեմոլս, այլ բարեխրատս: 4 * Զի զգաստացուցանիցեն զմանկամարդսն՝ այրասէրս լինել, որդեսէրս: 5 * Ցածունս, սուրբս, տնարարս, բարեգործս, հնազանդս իւրեանց արանց. զի մի բանն Այ, և վարդապետութիւնն հայհոյեսցի: 6 * Զերիտասարդս նոյնպէս աղաչեսջիր՝ ցածունս լինել: 7 * Ամենեցուն զանձն օրինակ կացուցանել՝ գործոց բարութեան, վարդապետութեամբ զանեղծութիւն ունել, զսրբութիւն, զպարկեշտութիւն: 8 * Զբանն ողջմտութեան, անպարսաւս լինել. զի որ հակառակորդն իցէ՝ յամօթ լիցի, և մի ինչ ունիցի ասել զմէնջ չարութեան: 9 *‖ Ծառայից՝ իւրեանց տերանց հնազանդ լինել՝ և հաճոյս յամի: մի հակառակօղս, 10 * Մի հատուս. այլ զամ հաւատս ցուցանել բարութեամբ, զի զվարդապետութիւն փրկչին մերոյ Այ զարդարեսցեն յամի: 11 *‖ Քանզի երևեցաւ շնորհն Այ փրկիչ ամ մարդկան: 12 * Որ խրատէ զմեզ՝ զի ուրասցուք զամ ամբարշտութիւն, և զաշխարհական ցանկութիւնս. զգաստութեամբ, և արդարութեամբ և աստուածպաշտութեամբ կեցցուք յաշխարհի: * Եւ

‖ Եփես. 6. 5. Կողոս. 3. 22. 1. Պետ. 2. 18.

3. 4.

13 *Եւ ակնկալցուք երանելւոյ յուսոյն՝ և յայտնութեան փառաց մեծին Այ՝ և փրկչին մերոյ Յի Քի ։ 14 *Որ ետ զանձն վասն մեր, զի փրկեսցէ յամ անօրէնութենէ. և սրբեսցէ իւր ժողովուրդ սեպհական, նախանձաւոր գործոց բարութեան ։ 15 *Զայդ խօսեաց՝ և մխիթարեա և յանդիմանեա ամ սաստիւ. զի մի ոք իցէ, որ զքեզ արհամարհիցէ ։

Գլ: Գ։

1 Եւ յուշ արասջիր նոցա իշխանութեանց և պետութեանց հնազանդ լինիլ՝ և հպատակ կալ ։ և ամ գործոց բարութեան պատրաստ գտանիլ ։ 2 *Մի զոք հայհոյել՝ անկռիւս լինիլ, հեզս. զամ յածութիւն առ ամ մարդիկ ցուցանել ։ 3 *Զի էաք երբեմն և մեք անմիտք՝ անհաւանք՝ մոլորեալք՝ ծառայէաք ցանկութեանց՝ և պէսպէս անառակութեանց ։ չարութբ՝ և նախանձու շրջէաք՝ ատեցեալք՝ և զմիմեանս ատէաք ։ 4 *‖ Իսկ յորժամ քաղցրութի և մարդասիրութի փրկչին մերոյ Այ յայտնեցաւ, 5 *‖ Ոչ ՚ի գործոց արդարութեան զոր արարաք մեք. այլ ըստ իւրում ողորմութեանն ապրեցոյց զմեզ ՚ի ձեռն աւազանին միւսանգամ ծննդեան, և նորոգութեան Հոգւոյն սրբոյ ։ 6 *Զոր էհեղ ՚ի մեզ առատութբ, ՚ի ձեռն Յի Քի փրկչին մերոյ ։ 7 *Զի արդարացեալք շնորհօք † եղիցուք ժառանգաւորք յուսով կենացն յաւիտենականաց ։ 8 *Հաւատարիմ է բանս. և ՚ի սոյն կամիմ զքեզ հաստատուն լինիլ ։ զի փոյթ արասցեն գործոց բարեաց վերակացու լինիլ՝ հաւատացեալքն յԱծ ։ զի այն է բարի և օգտակար մարդկան ։ 9 *‖ Այլ զյիմարութեան խնդիրս՝ և զտոհմաթիւս ։ և զհեռ՝ և զօրինական կռիւս ՚ի բաց մերժեսջիր ։ զի անօգուտք են, և ունայնք ։ 10 *Յառնէ հերձուածողէ՝ յետ միանգամ և երկիցս խրատելոյ՝ 11 հրաժարիջիր ։ *Գիտասջիր՝ զի թիւր եալ է այնպիսին, և մեղանչէ՝ անձամբ զանձն դատապարտեալ ։

12 *Այլ յորժամ յղեցից առ քեզ զԱրտեմա, կամ զտիւքիկոս, փութասջիր գալ առ իս ՚ի Նիկոպօլիս. զի անդ եդի ՚ի մտի ձմերել ։ 13 *Եւ զզենոն զօրինական դպիր, և զապօղոս փութով արձակեսջիր՝ զի մի ինչ պակասիցի նց ։ 14 *Ուսցին և մերքն ևս՝ բարեաց գործոց վերակացու լինիլ ՚ի պէտս կարեւորս. զի մի անպտուղք լինիցին ։ 15 *Ողջոյն տան քեզ՝ որք ընդ իս են ամենեքեան ։ ողջոյն տուր սիրելեաց մերոց հաւատովք ։ Շնորհք ընդ ձեզ ամենեսին ։ Ամէն ։

‖ Վեր. 2. 11.
‖ 2. Տիմ. 1. 9.
† նորին
‖ 1. Տիմ. 1. 4. և 4. 7. 2. Տիմ. 2. 23.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ՓԻԼԻՄՈՆ ։

Գլուխ Առաջներորդ ։



1 ՊՕՂՈՍ ԿԱՊԵԱԼ ՅԻ ՔԻ, և տիմոթէոս եղբայր ։ փիղիմոնի սիրելւոյ՝ և գործակցի մերոյ ։ 2 *Եւ ապփեայ քեռ, և արքիպպեայ զինուորակցի մերոյ՝ և առ տանն եկեղեցւոյդ ։ 3 *Շնորհք ընդ ձեզ և խաղաղութի յԱյ հօրէ մերմէ, և ՚ի Տն Յն Քն ։ 4 *Գոհանամ զԱյ իմոյ՝ յամ ժամ յիշատակել յաղօթս իմ վասն քո ։ 5 *Իբրև լսեմ զքո հաւատսն, և զսէր, զոր ունիս առ Տր Յս, 6 և առ ամ սուրբս ։ *Զի հաղորդութի հաւատոյն քոյ արգոյ լինիցի. գիտութբ ամ բարութեան, որ ՚ի ձեզ է ՚ի Քս Յս ։ 7 *Զի խնդութի յոյժ ընկալայ՝ և զմխիթարութի ՚ի վերայ սիրոյն քոյ. զի գութք սրբոցն հանգուցեալ են եղբայր ։ 8 *Վասն որոյ բազում համարձակութի ունիմ ՚ի Քս՝ 9 հրամայել քեզ զարժանն ։ *Վասն սիրոյ՝ մանաւանդ թէ աղաչեմ իսկ այնպիսի լինիլ՝ որպէս և պօղոս ծերացեալ այժմ և կապեալ ևս Յի Քի ։

10 *Աղաչեմ զքեզ վասն որդւոյ իմոյ, զոր ծնայ ՚ի կապանս իմ, զոնեսիմոս ։ 11 *Որ երբեմն անպիտան էր քեզ. բայց 12 արդ քեզ և ինձ պիտանի ։ *Զոր յղեցի առ քեզ ։ Եւ դու զդա ընկալջիր 13 այս ինքն է զիմ աղիս ։ *Զոր կամէի

առ իս արգելուլ՝ զի ընդ քո ունիցի ինձ սպաս 'ի կապանս աւետարանին։ 14 *Բայց առանց քոց կամաց ոչինչ կամեցայ առնել՝ զի մի բարիքդ քո 'ի հարկէ լինիցին՝ այլ կամաւ։ 15 *Եւ թերեւս վասն այնորիկ մեկնեցաւ առ ժամանակ մի, զի յաւիտեան ունիցիս զդա։ 16 *Մի եւս իբրեւ զծառայ՝ այլ 'ի վեր քան զծառայ, իբրեւ զեղբայր սիրելի։ եթէ ինձ այսպէս՝ որչափ եւս առաւել քեզ մարմնով՝ եւ Տր, 17 *Եթէ զիս քեզ հաղորդ համարիցիս՝ ընկալ զդա իբրեւ զիս։ 18 *Եւ եթէ յանցուցեալ ինչ իցէ՝ կամ պարտիցի, զայն ինձ համարեա՛ց։ 19 *Ես Պօղոս գրեցի իմով ձեռամբ. ես հատուցից, զի մի ասիցեմ քեզ՝ թէ եւ դու զանձն քո ինձ պարտիս։ 20 *Այո՛ եղբայր՝ ես քո փոխանակ եղէց 'ի Տր. հանգո՛ զաղիսդ իմ 'ի Քս։ 21 *Յուսացեալ 'ի հնազանդութիւնդ քո՝ գրեցի առ քեզ. քանզի գիտեմ թէ առաւել եւս քան զոր ասեմդ՝ առնիցես։ 22 *Միանգամայն եւ պատրաստեսջիր ինձ վանս. քանզի յուսամ եթէ աղօթիւք ձերովք շնորհեցայց ձեզ։ 23 *Ողջոյն տայ ձեզ Եպափրաս գերեկից իմ 'ի Քս Յս։ 24 *Եւ Մարկոս՝ եւ Արիստարքոս, եւ Դեմաս, եւ Ղուկաս՝ գործակիցք իմ։ 25 *Շնորհք Տն Յի Քի Տն մերոյ ընդ ոգւոյդ ձերում։ Ամէն։

Մեկնեցաւ 'ի քէն

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍՆ։

Գլուխ Առաջներորդ։



1 ԱԶՈՒՄ ՄԱՍԱՄԲՔ եւ բազում օրինակօք կանխաւ խօսեցաւ Ած ընդ հարս մեր մարգարէիւք։ 2 *'Ի վախճանի աւուրցս այսոցիկ խօսեցաւ ը մեզ Որդւովն, զոր եդ ժառանգ ամի. որով եւ զյաւիտեանս արար։ 3 *Որ է լոյս փառաց՝ եւ նկարագիր էութե նորա. որ կրէ զամ բանիւ զօրութե իւրոյ. սրբութի մեղաց մերոց արարեալ՝ նստաւ ընդ աջմէ մեծութեն 'ի բարձունս։ 4 *Այնչափ առաւել եղեալ քան զհրեշտակս, որչափ լաւ եւս քան զնս անուն ժառանգեաց։ 5 *Քանզի ցո՞ երբէք ասաց 'ի հրեշտակաց. Որդի իմ ես դու՝ ես այսօր ծնայ զքեզ. եւ դարձեալ թէ. Ես եղէց նմա 'ի հայր. եւ նա եղիցի ինձ յորդի։ 6 *Այլ յորժամ միւս անգամ մուծցէ զանդրանիկն յաշխարհ, ասէ. Երկիր պագցեն նմա ամ հրեշտակք Այ։ 7 *Այլ առ հրեշտակսն ասէ. Ո՛ արար զհրեշտակս իւր ոգիս. եւ զպաշտօնեայս իւր բոց հրոյ։ 8 *Իսկ ցորդին ասէ. Աթոռ քո Ած յաւիտեանս յաւիտենից. գաւազան ուղղութե, գաւազան արքայութե քոյ։ 9 *Սիրեցեր զարդարութի եւ ատեցեր զանօրէնութի. վա այսորիկ եօծ զքեզ Ած՝ Ած քո իւղով ուրախութե առաւել քան զընկերս քո։ 10 *Եւ դու Տր 'ի սկզբանէ զերկիր հաստատեցեր. եւ գործք ձեռաց քոց երկինք են։ 11 *Նոքա կորնչին՝ եւ դու կաս, եւ ամենեքեան իբրեւ զձորձս մաշեսցին, 12 եւ իբրեւ զվերարկու։ *Գալարեսցես զնս իբրեւ զհանդերձ՝ եւ գալարեսցին. բայց դու նոյն իսկ ես՝ եւ ամք քո ոչ պակասին։ 13 *Յո՞ երբէք ասաց 'ի հրեշտակաց. Նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։ 14 *Ոչ ապաքէն ամենեքեան հոգիք են հարկաւորք՝ որք առաքին 'ի սպասաւորութի վս այնոցիկ, որք ժառանգելոց են զփրկութի։

Իմաստ. 7. 26. — Սաղմ. 2. 7. — 2 Թագ. 7. 14. — Սաղմ. 96. 7. — Սաղմ. 103. 4. — Սաղմ. 44. 7. — Սաղմ. 101. 26. — Սաղմ. 109. 1. — 1. Կոր. 15. 25.

## Գլ. Բ.

1 Վասն այնորիկ պարտ է մեզ առաւել եւս ունկնդիր լինել բանիցն ասացելոց՝ զի մի երբէք նուաղիցուք։ 2 *Զի եթէ որ 'ի ձեռն հրեշտակաց խօսեցաւ բանն՝ հաստատուն եղեւ՝ եւ ամ յանցաւորութի եւ անհնազանդութի ընկալաւ զպատիժ պատուհասի։ 3 *Մեք զիա՞րդ ապրիցուք հեղգացեալք յայնպիսւոյ փրկութէ. որ զսկիզբն էառ խօսելոյ 'ի Տէ. եւ 'ի ձեռն այնոցիկ որք լուանն՝ 'ի մեզ հաստատեցաւ։ 4 *Վկայեալ յԱյ նշանօք եւ արուեստիւք եւ պէսպէս զօրութեամբք, եւ մա-

Մարկ. 16. 20.

սամբք

սամբք հոգւոյն սրբոյ ըստ իւրոյ կա
մաց ։ * Զի ոչ եթէ հրեշտակաց հնա 5
զանդեցոյց զհանդերձեալ աշխարհն,
վասն որոյ մեքս խօսիմք ։ * Վկայեաց 6
ոք ուրեք՝ և ասէ ։ ‖ զի՞նչ է մարդ՝ եթէ [‖ Սաղմ. 8. 5.]
յիշեցես զնա ․ կամ որդի մարդոյ՝
թէ այց արասցես նմա ։ * Փոքր մի խո 7
նարհ արարեր զնա քան զհրեշտակս ․
փառօք և պատուով պսակեցեր զնա՝
և կացուցեր զնա ՚ի վերայ ձեռակեր_
տաց քոց ։ * ‖ Զամ ինչ հնազանդ ա_ 8 [‖ Մատթ. 28. 18. 1. Կորն. 15. 26.]
րարեր ՚ի ներքոյ ոտից նր ։ Արդ ՚ի հնա
զանդեցուցանել նմա զամ, զոչինչ
եթող անհնազանդ ՚ի նմանէ ։ բայց
այժմ ոչ ևս տեսանեմք հնազանդեալ
նմա զամ ։ * ‖ Այլ փոքր մի խոնարհեալ 9 [‖ Փիլիպ. 2. 8.]
քան զհրեշտակս տեսանեմք զՅս զն
չարչարանաց մահուն ։ փառօք և պատ
ուով պսակեալ ․ զի շնորհօքն Այ զն
ամենեցուն զմահ ճաշակեսցէ ։
* Զի վայելէր իսկ նմա, զն որոյ ամ, 10
և որով ամ, բազում որդիս ՚ի փառս
ածել՝ և զառաջնորդ փրկութե նոցա
չարչարանօք կատարել ։ * Զի որ սր_ 11
բէն, և որք սրբին, ՚ի միոջէ են ամե
նեքին ։ վասն որոյ ոչ ամօթ համարի
եղբարս անուանել զնոսա և ասել ։
* ‖ Պատմեցից զանուն քո եղբարց ի_ 12 [‖ Սաղմ. 21. 23.]
մոց ․ ՚ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ ։
* Եւ դարձեալ՝ թէ ‖ Ես եղէց յուսա_ 13 [‖ Սաղմ. 17. 3.]
ցեալ ՚ի նա ։ և դարձեալ ․ ‖ Ահաւասիկ [‖ Եսայ. 8. 18.]
ես և մանկունք իմ, զոր ետ ինձ Այ ։
* Արդ՝ որովհետև մանկունք հաղոր_ 14 [հաղորդեն]
դեցին արեան և մարմնոյ ․ և ինքն իսկ
մերձաւորութբ կցորդ եղև նոյունց ․
‖ զի մահուն իւրով խափանեսցէ զայն, [‖ Ովսէ. 13. 14. 1. Կորն. 15. 54.]
որ զիշխանութի մահուն ունէր՝ այս_
ինքն է, զսատանայ ։ * Եւ ապրեցուս 15
ցէ զայնոսիկ, որք մահուն երկիւղիւ
հանապազ կէին վտարանդեալք ՚ի ծա
ռայութի ։ * Քանզի ոչ երբէք զհրեշ 16
տակաց բուռնհարկանէ ․ այլ զզաւա
կէն աբրահամու բուռնհարկանէ ։
* Ուստի պարտ իսկ էր նմա ամի եղ 17
բարց նմանիլ ․ զի ողորմած լինիցի, և
հաւատարիմ քահանայապետ յԱծա
կոյս կողմանէ անտի, առ ՚ի քաւելոյ
զմեղս ժողովրդեանն ։ * Զի որով ինքն 18
չարչարեցաւ զփորձառեալ, կարող է
և փորձանաւորաց օգնական լինել ։

## ԳԼ ։ Գ ։

Ուստի, եղբարք սբք՝ երկնաւոր կոչ 1
մանն բաժանորդք՝ նայեցարուք
ընդ առաքեալն, և ընդ քահանայա
պետն խոստովանութե մերոյ ընդ Յս
Քս ։ * Որ հաւատարիմ է արարչին 2 [‖ Թուոց 12. 7.]
իւրոյ՝ որպէս և ‖ մովսէս յամի տան նր ։

3 * Զի առաւել ևս փառաց քան զմօ_
սէս արժանի եղև ․ որչափ առաւել
պատիւ ունիցի քան զտունն՝ տանն առ_ [առնողն ։]
4 նելի ։ * Զի ամ տուն կազմի, յումե_
մէ կազմի ․ իսկ որ զամ արար, Այ է ։
5 * Մովսէս հաւատարիմ է յամ տան նր
իբրև զծառայ՝ առ ՚ի վկայութի բա
6 նիցն ասացելոց ։ * Այլ Քս իբրև որ
դի ՚ի վերայ տան իւրոյ ։ որոյ տունն
մեք իսկ եմք ․ միայն թէ զհամարձա_
կութի, և զպարծանս յուսոյն մինչև
՚ի վախճան հաստատուն ունիցիմք ։
7 * Վասն որոյ այսպէս ասէ հոգին
սբ ։ ‖ այսօր եթէ ձայնի նր լուիցէք, [‖ Սաղմ. 94. 8.]
8 * Մի խստացուցանէք զսիրտս ձեր իբ
րև ՚ի դառնութե, յաւուրն փորձութե
9 յանապատին ։ * Ուր փորձեցին զիս
հարքն ձեր ․ քննեցին զիս՝ և տեսին
10 զգործս իմ, * Զքառասուն ամ ։ զն
որոյ տաղտկացայ ազգաւն այնուիկ, և
ասացի ․ միշտ մոլորեալ են սրտիւք ։ և
նոքա ոչ ծանեան զճանապարհս իմ ։
11 * Որպ երդուայ ՚ի բարկութե իմում,
12 թէ մտցեն ՚ի հանգիստ իմ ։ * Տեսէք
եղբարք՝ գուցէ երբէք լինիցի յումեք
՚ի ձէնջ սիրտ չար անհաւատութեան՝
ապստամբ լինիլ յԱյ կենդանւոյ ։
13 * Այլ մխիթարեցէք զմիմեանս զօր_
հանապազ՝ մինչդեռ այսօրդ առաջի
կայ ․ զի մի ոք խստասցի ՚ի ձէնջ խա_
14 բէութբ մեղաց ։ * Քանզի բաժա_
նորդք եղեաք Քի ․ միայն թէ զսկիզբն
հաստատութեն մինչև ցվախճան պինդ
15 կալցուք ։ * Յասելն, Այսօր եթէ
ձայնի նր լուիցէք՝ մի խստացուցանէք
զսիրտս ձեր իբրև ՚ի դառնութենն ։
16 * Քանզի ոմանք լուան՝ և դառնացու
ցին ։ այլ ոչ ամենեքեան՝ որք ելեալք
էին յեգիպտոսէ ՚ի ձեռն մովսեսի ։
17 * Յումմէ՞ տաղտկացաւ զքառասուն
ամն ։ ոչ ապաքէն ՚ի յանցուցելոցն,
‖ որոց ոսկերքն անկան յանապատի [‖ Թուոց 14. 37.]
18 անդ ։ * Ում երդուաւ չմտանել ՚ի
հանգիստն իւր ․ եթէ ոչ անհաւա_
19 տիցն ։ * Եւ տեսանեմք՝ զի ոչ կարա
ցին մտանել վասն անհաւատութենն ։

## ԳԼ ։ Դ ։

1 Երկիցուք այսուհետև՝ գուցէ ՚ի
թողուլ զաւետիսն, ՚ի մտանելոյ
՚ի հանգիստն նր՝ գտանիցի ոք ՚ի ձէնջ
2 նուազեալ ։ * Քանզի եմք աւետարա
նեալք որպ և նոքայն ։ այլ նոցա ոչինչ
օգնեաց լուր բանին, չամիքելոյն ՚ի
3 հնազանդութի հաւատոց ։ * Այլ մեք
մտանեմք ՚ի հանգիստն ․ որք հաւա_
տացաք ։ որպ և ասացն թէ՝ ‖ որպէս [‖ Սաղմ. 94. 11.]
երդուայ ՚ի բարկութե իմում, թէ

մտցեն 'ի հանգիստ իմ. թէպէտ և արդիւնքն 'ի սկզբանէ աշխարհի լեալ էին: 4 * Քանզի ասէ ուրեք վասն աւուրն եօթներորդի այսպէս: և հանգեաւ Ա͞ծ յաւուրն եօթներորդի յա͞մ գործոց իւրոց: 5 * Եւ աստ դարձեալ ասէ՝ թէ մտցեն 'ի հանգիստ իմ:

6 * Եւ արդ՝ քանզի արգելան ոմանք մտանել 'ի նա: և որք յառաջագոյն աւետարանեալքն էին՝ չմտին վ͞ն անհաւատութեանն: 7 * Դարձեալ զայլ օր սահմանէ՝ զայսօրն 'ի Դաւիթ և ասէ՝ յետ այնչափ ժամանակաց, որպէս յառաջագոյնն ասաց. այսօր եթէ ձայնի նորա լուիջիք՝ մի խստացուցանէք զսիրտս ձեր: 8 * Զի եթէ զնոսա Յեսուայ հանգուցեալ էր, ապա վ͞ն այլոյ աւուր ոչ խօսէր՝ յետ այնորիկ:

9 * Արդ ուրեմն նուաղեալ է շաբաթումն ժողովրդեանն Ա͞յ: 10 * Զի որ եմուտ 'ի հանգիստն ն͞ր. և նա հանգեաւ յիւրոց գործոց անտի. ո͞պ և Ա͞ծ յիւրայնոցն: 11 * Փութասցուք այսուհետև մտանել յայն հանգիստ: զի մի ոք ընդ նմին օրինակաւ անհաւատութեան անկանիցի: 12 * Քանզի կենդանի է բանն Ա͞յ՝ և ազդօղ՝ և հատու քան զա͞մ սուր երկսայրի, և անցանէ մինչև ցորոշումն շնչոյ՝ և ոգւոյ՝ և յօդից՝ և ուղղոյ. և քննիչ է մտաց՝ և խորհրդոց սրտից: 13 * Եւ չիք արարած աներևոյթ յերեսաց նորա: այլ ա͞մ ինչ մերկապարանոց կայ առաջի աչաց ն͞ր՝ զորմէ մեր բանքս են: 14 * Ունիմք այսուհետև քահանայապետ մեծ անցեալ ընդ երկինս, զՅ͞ս զՈրդին Ա͞յ: պինդ կալցուք զխոստովանութիւն: 15 * Քանզի ոչ եթէ ունիմք քահանայապետ՝ որ չիցէ կարող չարչարակից լինել տկարութեան մերոյ. այլ փորձեալ ա͞մի ըստ նմանութեան առանց մեղաց: 16 * Մատիցուք այսուհետև համարձակութ͞բ առաջի աթոռոյ շնորհաց ն͞ր. զի ընկալցուք զողորմութի՛ւն և գտցուք շնորհս 'ի դէպ ժամանակի օգնականութեան:

Ծննդ. 2. 2.
Եբր. 3. 7.
Սաղմ. 33. 16.
Սիրաք. 15. 20.

## Գ͞լ: Ե:

1 Զի ա͞մ քահանայապետ 'ի մարդկանէ առեալ՝ վասն մարդկան կայ յԱ͞ծ ակոյս կողմն անդր. զի մատուսցէ պատարագս, և զոհս վասն մեղաց: 2 * Զափու չարչարակից կարօղ է լինել տգիտաց և մոլորելոց: քանզի և ինքն իսկ տկարութ͞բ զգածեալ է: 3 * Վասն այնորիկ հարկ է՝ ո͞պ վ͞ն ժողովրդեանն, նոյնպէս և ընդ անձին մատուցանել պատարագս վասն մեղաց: 4 * Եւ ոչ եթէ անձամբ ոք առնու զպատիւ. այլ կոչեցեալն յԱ͞յ՝ ո͞պ և Ահարոն: 5 * Նոյնպէս և Ք͞ս ոչ եթէ անձին ինչ շուք եդ լինել քահանայապետ. այլ որ խօսեցաւն առ նա՝ թէ որդի իմ ես դու՝ ես այսօր ծնայ զքեզ: 6 * Ո͞պ և 'ի միւսումն ասէ: դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի: 7 * Որ յաւուրս մարմնոյ իւրոյ՝ աղօթս և պաղատանս առ այն, որ կարօղն էր ապրեցուցանել զնա 'ի մահուանէ՝ ուժգին գոչմամբ և արտասուօք մատուցանէր: և լսելի լինէր առ լաւութեանն՝ 8 * Թէպէտ և Որդի է՝ ուսաւ 'ի չարչարանաց անտի զհնազանդութի՛ւն: 9 * Եւ իբրև կատարեցաւ՝ եղև ա͞մ հնազանդելոց իւրոց պատճառ փրկութեան յաւիտենից: 10 * Եւ անուանեցաւ յԱ͞յ քահանայապետ յաւիտենից ըստ կարգին Մելքիսեդեկի: 11 * Ո͞ն որոյ բազումք են մեզ բանք, և դժուարապատում 'ի մեկնել: քանզի խօթամիտք եղէք լսելեօք: 12 * Փոխանակ զի պա՛րտ էր ձեզ լինել վարդապետս վ͞ն ժամանակին: դարձեալ պիտոյ է ձեզ ուսանել՝ թէ զի՞նչ են նշանագիրք 'ի սկզբան բանիցն Ա͞յ: և եղէք կարօտք կաթին՝ և ոչ հաստատուն կերակրոյ: 13 * Զի ա͞մ որ կաթնկեր է՝ տգէտ է բանին արդարութեան, քանզի տղայ է: 14 * Այլ կատարելոցն է հաստատուն կերակուր: որոց՝ վասն 'ի չափն հասանելոյ՝ ճաշակելեօքն կիրթք են ընտրութեան բարւոյ և չարի:

Ելից. 28. 1.
2. Մն. 26. 18.
Սաղմ. 2. 7.
Սաղմ. 109. 4.

## Գ͞լ: Զ:

1 Վասն որոյ թողեալ զբանն սկզբան Ք͞ի 'ի կատարումն եկեսցուք. մի միւսանգամ արկանել զհիմն ապաշխարութեան, 'ի մեռելոտի գործոց անտի, և հաւատոյն որ յԱ͞ծ: 2 * Եւ մկրտութեանցն վարդապետութեան. և ձեռնադրութեան ձեռաց. և յարութեան մեռելոց. և դատաստանին յաւիտենից: 3 * Եւ արդ՝ արասցուք զայն, եթէ Ա͞ծ հրամայեսցէ: 4 * Քանզի անհնար է միանգամ մկրտելոցն, որք ճաշակեցին յերկնաւոր պարգևացն, և հաղորդք եղեն Հոգւոյն սրբոյ, 5 * Եւ զգեղեցիկ բանին Ա͞յ ճաշակս ճաշակեցին, և զզօրութի հանդերձելոյ աշխարհին, 6 * Եւ կործանեցին՝ միւսանգամ նորոգել յապաշխարութի՛ւն և վերստին 'ի խաչ հանել անձանց զՈրդին Ա͞յ՝ և դարձեալ խայտառակել: 7 * Քանզի երկիր՝ որ ըմպիցէ զանձրև բազում անգամ եկեալ 'ի վերայ նորա՝ ծնանիցի արդիւնս շահեկանս ն͞ց, վասն

որոյ

Մատթ. 12. 45.
2. Պետ. 2. 20.
Եբր. 10. 26.

յորոց գործի

որոյ գործեցին, ընդունի զօրհնութիւն յԱյ: 8 * Իսկ որ բերէ զփուշ և զտատասկ, անպիտան է՝ և մերձ է յանէծս, և վախճան նորա յայրումն : 9 * Բայց հաստատեալ եմ վն ձեր սիրելիք 'ի լաւ անդր, և որ լինէ փրկութեան. զի թէպէտ և այսպէս խօսիմք: 10 *Ոչ եթէ անիրաւ ինչ է Ած մոռանալ զգործս ձեր և զսէր՝ զոր ցուցանէք յանուն նր: զի պաշտէիք զսուրբս, և պաշտէք: 11 * Այլ մեք ըղձամք՝ զի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ զնոյն փոյթ ցուցանիցէ 'ի հաստատութիւն յուսոյն՝ մինչև ցվախճան : 12 * Զի մի հեղգամտիք լինիցիք, նմանօղք եղերուք այնոցիկ՝ որք հաւատովք և երկայնմտութեամբ ժառանգեցին զաւետիսն : 13 * Զի աբրահամու խոստացեալ զաւետիսն Այ՝ քանզի յայլոք 'ի մեծ ոչ գոյր երդնուլ, * 14 Յանձն իւր երդուաւ, և ասէ:

Ծնն. 22.16.

Այո, օրհնելով օրհնեցից զքեզ. և բազմացուցանելով բազմացուցից զքեզ: 15 *Եւ այնպէս երկայնամիտ եղեալ՝ եհաս աւետեացն : 16 *Զի մարդիկ՝ որինչ 'ի վերոյ է քան զինքեանս՝ յայն երդնուն : և ամենայն հակառակութեան նց վճարի հաստատութիւն երդումն է: 17 * Որով առաւել ևս կամեցեալ Այ ցուցանել ժառանգաւորաց աւետեացն զհաստատութիւն խորհրդոյն իւրոյ, միջնորդեաց երդմամբ : 18 * Զի երկու անփոփոխելի իրօք՝ որովք անհնարին է ստել Այ, զհաստատուն մխիթարութիւն ունիցիմք՝ որք ապաստան եղեաք բուռն հարկանել զհանդերձեալ յուսոյն :19 * Զոր իբրև զխարիսխ հաստատուն և անշարժ ունիցիմք անձանց մերոց, որ և մտանիցէ 'ի ներքին կողմն վարագուրին: 20 *Ուր կարապետն մեր Յս եմուտ վասն մեր՝ ըստ կարգին մելքիսեդեկի եղև քահանայապետ յաւիտենից:

եղեալ

## ԳԼ: Է:

Ծնն. 14. 18.

1 Քանզի սա մելքիսեդեկ թագաւոր էր սաղեմայ. քահանայ Այ բարձրելոյ. որ ել ընդ առաջ աբրահամու, յորժամ դարձեալ գայր 'ի կոտորածէ թագաւորացն՝ և օրհնեաց զնա : 2 * Որում և տասանորդս յամենայն ետ աբրահամ. նախ թարգմանի թագաւոր արդարութեան. ապա թագաւոր սաղեմայ, որ է թագաւոր խաղաղութեան : 3 * Անհայր՝ անմայր՝ չհամարեալ յազգս. որոյ ոչ սկիզբն աւուրց՝ և ոչ կատարած կենաց : նմանեալ Որդւոյ Այ կայ մնայ քահանայ մշտնջենաւոր: 4 * Արդ տեսէք որպիսի ոք էր սա. որում և աբրահամ տասանորդս ետ յաւարէ անտի՝ նահապետն : 5 * Եւ որք յորդւոցն ղևեայ զքահանայութիւն առնուն, պատուէր ունին տասանորդել զժողովուրդն ըստ օրինացն, այս ինքն է՝ զեղբարս իւրեանց. թէպէտ և ելեալ իցեն յերանացն աբրահամու : 6 * Իսկ չհամարեալն յազգս 'ի նոցանէ՝ տասանորդեաց զաբրահամ : և զնա, որոյ զաւետիսն ընկալեալ էր, 7 օրհնեաց : * Զի առանց ամենայն հակառակութեան, նուաղն 'ի լաւէ անտի օրհնեսցի : 8 * Եւ աստ մարդք մահկանացուք տասանորդս առնուն. բայց անդ վկայեցաւ՝ թէ կենդանի է:( և որպէս 9 բանից կարգ է ասել:) *Թէ աբրահամաւ և ղևի իսկ՝ որ զտասանորդսն առնոյր, 10 տասանորդեցաւ : * Զի դեռ ևս յերանս հօր իւրոյ էր՝ յորժամ ընդ 11 առաջ եղև նմա մելքիսեդեկ: * Իսկ արդ՝ եթէ կատարումն 'ի ձեռն ղևտացւոց քահանայութեանն էր, (քանզի ժողովուրդն յայն օրէնս դրեցաւ:) զի՞նչ պիտոյ էր ըստ կարգին մելքիսեդեկի այլում քահանայի յառնել. և ոչ ասել 12 թէ ըստ կարգին ահարոնի : * Այլ 'ի փոփոխիլ քահանայութեանն, հարկ էր 13 և օրինացն փոփոխումն լինիլ: * Զի զորմէ այսպէսն ասի՝ յայլմէ ազգէ կալաւ զհաղորդութիւն, յորմէ ոչոք երբեք 14 եղև հաղորդ սեղանոյն : * Արդ յայտ իսկ է. թէ յազգէ յուդայ ծագեցաւ Տր մեր : յորմէ ազգէ վն քահանայից 15 մովսէս ինչ ոչ խօսեցաւ: * Եւ ևս առաւել յայտ է՝ թէ ըստ նմանութեան մելքիսեդեկի յայտնելոց է այլ քահա16 նայ : *Որ ոչ ըստ մարմնաւոր պատուիրանին եղև, այլ ըստ զօրութեան կե17 նացն անվախճանից: *Քանզի վկայեցաւ. թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին մելքիսեդեկի: 18 * Արհամարհութիւն լինիւր առաջնոյ պատուիրանին, վն նորին տկարութեան 19 և անշահութեան: * Քանզի ոչինչ կատարումն գործեցին օրէնքն, և մուտ աղնուական յուսոյն՝ որով մերձենամք 20 առ Ած : * Եւ այնչափ, զի ոչ առանց երդման : ( զի են ոմանք՝ որք առանց երդման են կացեալ քահանայք : 21 *Բայց սա երդմամբ 'ի ձեռն այնորիկ՝ որ ասացն 'ի նա : երդուաւ Տր՝ և ոչ ևս զղջասցի , դու ես քահանայ 22 յաւիտեան :) * Եւ այնչափ լաւագոյն 23 ուխտի եղև երաշխաւոր Յս : * Եւ բազում են կացեալ քահանայք՝ վն մահու արգել լինելոյ 'ի մշտնջենաւո24 րել : * Իսկ սա վն յաւիտեան կալոյ՝ առանց անցանելոյ ունի զքահանայութիւն :

2. Օրէն. 18. 3.
Յեսու. 14. 4.
օրհնէ :
Սաղմ. 109.4.
ցնս.
Սաղմ. 109. 4.

թ՟ին ։ 25 * Աստի և կենդանի առնել համօրէն կարող է զմատուցեալսն նովաւ առ Ա՟ծ ։ քանզի միշտ կենդանի է լինել բարեխօս վասն ն՟ց ։ 26 * Զի այն պիտի իսկ վայելէր մեզ քահանայապետ ։ սուրբ՝ անմեղ՝ անարատ՝ զատեալ ՚ի մեղաւորաց ․ և բարձրացեալ քան զերկինս ։ 27 * Որում ոչ հանապազ հարկ է որպէս այլոց քահանայապետացն ․ ‖նախ վասն իւրեանց մեղացն պատարագս մատուցանել , և ապա վասն ժողովրդեանն ։ իսկ սա զայն միանգամ կատարեաց՝ զի զանձն իւր մատոյց պատարագ ։ 28 * Օրէնքն զմարդիկ կացուցանեն քահանայապետ՝ զգածեալս տկարութ՟բ ․ իսկ բանն երդման յետ օրինացն՝ զՈրդի , որ յաւիտեան կատարեալ է ։

‖Ղևտ․ 16. 6.

## Գլ ։ Ը ։

1 Եւ՛ բանից գլուխ խօսիցս՝ զայնպիսի ունիմք քահանայապետ՝ որ նստաւ ընդ աջմէ մեծութեան աթոռոյն յերկինս ։ 2 * Սրբութեանցն պաշտօնեայ՝ և խորանին ճշմարտութեան , զոր Տ՟ր կանգնեաց՝ և ոչ մարդ ։ 3 * Զի ամ՟ քահանայապետ վասն մատուցանելոյ զընծայս և զպատարագս կայ ․ ուստի հարկ է և նմա ունել ինչ՝ զոր մատուցանիցէ ։ 4 * Զի եթէ էր յերկրի, թերևս չէր իսկ քահանայ ․ զի գոյին, որք մատուցանէին ըստ օրինացն պատարագ ։ 5 * Որք առակաւ և օրինակաւ պաշտէին երկնաւորացն ։ ո՟պ և հրամայեցաւ Մովսէսի , յորժամ գործելոց էր զվրանն ժամուն ։ ‖Տեսջիր ( ասէ ) արասցես զամ՟ ըստ օրինակին՝ որ ցուցաւ քեզ ՚ի լերինն ։ 6 * Բայց արդ առաւ տադոյն ևս պաշտաման եհաս Յ՟ս , որչափ լաւագոյն ևս ուխտի է միջնորդ՝ որ յառաւել աւետիսն օրինադրեցաւ ։ 7 * Զի եթէ առաջինն անարատ էր , ապա երկրորդն տեղի ոչ խնդրէր ։ 8 * Նա աւանիկ բամբասէ զն՟ս, և ասէ ։ ‖Աւասիկ աւուրք եկեսցեն , ասէ Տ՟ր ․ և կատարեցից ՚ի վերայ տանն Ի՟լի և ՚ի վերայ տանն Յուդայ՝ ուխտ նոր ։ 9 * Ոչ ըստ ուխտին՝ զոր եդի ընդ հարս նոցա , յաւուր յորում առի ՚ի ձեռն՝ հանել զնոսա յերկրէն Եգիպտացւոց ։ և զի նոքա ոչ կացին յուխտին իմում , և ես անփոյթ արարի զնոցանէ ․ ասէ Տ՟ր ամենակալ ։ 10 * Այլ այս է ուխտն՝ զոր եդից տանն Ի՟լի՝ յետ աւուրցն այնոցիկ , ասէ Տէր ։ տաց զօրէնս իմ ՚ի միտս նոցա՝ և ՚ի սիրտս նոցա գրեցից զնոսա ։ և եղէց նոցա Ա՟ծ և նոքա եղիցին ինձ ՚ի ժողովուրդ ։ 11 * Եւ՛ ոչ ևս ուսուցանիցեն իւրաքանչիւր զքաղաքակից իւր ։ և իւրաքանչիւր զեղբայր իւր՝ և ասիցեն , թէ ծանիր զՏ՟ր ։ զի ամենեքեան ծանիցեն զիս ՚ի փոքրկանց մինչև ՚ի մեծամեծս ն՟ց ։ 12 * Զի քաւիչ եղէց անիրաւութեանց նոցա ։ և զմեղս նոցա՝ և զանօրէնութիւնս ն՟ց այլ ոչ ևս յիշեցից ։ 13 * Որդ՝ ասելովն նոր՝ հնացոյց զառաջինն ։ և որ հնանայն և ծերանայ՝ մերձ է յապականութիւն ։

յերկրէ

‖Ելից․ 25. 40. Գործ․ 7. 44.

‖Երեմ․ 31. 31.

## Գլ ։ Թ ։

1 Ունիլ ունէր և առաջինն իրաւունս պաշտամանն յայնժամ զաշխարհական սրբութիւն ։ 2 * ‖Զի խորանն առաջին հանդերձեցաւ այսպէս ։ յորում էին աշտանակն՝ և սեղանն , և հացն նուիրաց՝ որ սրբութի՟ կոչիւր ։ 3 * Եւ՛ յետ երկրորդ վարագուրին խորանն՝ որ կոչիւր սրբութի՟ սրբութեանց ։ 4 * Յորում կայր ‖բուրվառն ոսկի՝ և արկղն կտակարանաց պատեալ ներքոյ և արտաքոյ ոսկւով ։ յորում սափորն ոսկի լի մանանայիւ , և գաւազանն Ահարոնի՝ որ ծաղկեցաւ՝ և ‖տախտակք կտակարանացն ։ 5 * Եւ՛ ՚ի վերայ նորա քերովբէքն փառաց՝ որք հովանի ունէին ՚ի վերայ քաւութեանն ։ վասն որոյ ոչ է այժմ ասել միըստմիոջէ ։ 6 * Եւ՛ այն ամ՟ իբրև այնպէս հանդերձեալ կայր , յառաջին խորանն յամ՟ ժամ մտանէին քահանայքն զպաշտամունսն կատարել ։ 7 * Բայց յերկրորդն ‖միանգամ ՚ի տարւոջն , քահանայապետն , և զայն ոչ առանց արեան , զոր մատուցանէր վ՟ս իւր , և վասն ժողովրդեանն անգիտութեան ։ 8 * Զայս ցուցեալ Հոգւոյն սրբոյ՝ մինչև յայտնեալ էր ճանապարհի սրբութեանցն ։ քանզի դեռ առաջին խորանն ունէր զհաստատութ՟ին ։ 9 * Որ է առակ ժամանակին , որ առաջի կայր ․ յորում պատարագքն և զոհքն մատչէին , որք ոչ կարէին ըստ միտս կատարել զպաշտամունսն ․ բայց 10 միայն կերակրօք և ըմպելեօք , * Եւ՛ պէսպէս մկրտութ՟բք՝ մարմնոյ արդարութ՟բք ․ որ մինչև ՚ի ժամանակս ուղղութեան ՚ի վերայ կային ։ 11 * Այլ Ք՟ս եկեալ քահանայապետ՝ հանդերձելոցն բարեաց՝ մեծաւն և կատարելով՟ և անձեռագործ խորանաւ՝ այս ինքն 12 է՝ որ ոչ յայսց արարածոց ։ * Եւ՛ ոչ արեամբ նոխազաց և զուարակաց ․ այլ իւրով արեամբն եմուտ միանգամ ՚ի սրբութիւնն՝ յաւիտենական գտեալ 13 զփրկութի՟ ։ * ‖Զի եթէ արիւն ցլուցն և նոխազաց՝ և մոխիր երնջոցն ցանեալ՝ զպղծեալսն սրբէր առ ՚ի մարմնոյ

‖Ելից․ 26. 1. և 36. 8.

‖Ղևտ․ 16. 12. Թուոց 16. 6.

‖3 Թագ․ 8. 9. 2․ Մնաց 5. 10.

‖Ելից․ 30. 11. Ղևտ․ 16. 2.

‖Ղևտ․ 16. 14.

նոյ սրբութեան : *Որչափ ևս առաւել 14 արիւնն Ք՟ի, որ 'ի ձեռն Հոգւոյն յաւիտենականի մատոյց զանձն անարատ պատարագ Ա՟յ, սրբեսցէ զխիղճ մտաց ձերոց 'ի մեռելոտի գործոց անտի՝ պաշտել զԱ՟ծ կենդանի : *Եւ վ՟ն 15 այնորիկ նորոյ ուխտիս է միջնորդ : զի յորժամ մահ լինիցի 'ի փրկութիւն վասն առաջնոյ ուխտին յանցանաց, զաւետիս առցեն հրաւիրեալքն 'ի ժառանգութիւն յաւիտենից : *Քանզի 16 ուր կտակ է՝ հարկ է զմահ 'ի մէջ բերել զկտակագրին : *Զի կտակ յետ 17 մահուն հաստատուն է : ապա թէ ոչ՝ զի՞նչ իցէ հաստատուն, մինչ կտակագիրն կենդանի է : *Ուստի և ոչ 18 առաջինն առանց արեան նորոգիւր : *Քանզի իբրև պատմեցան ա՟մ պատ- 19 ուիրանք օրինացն 'ի Մովսիսէ ժողովրդեանն՝ առեալ զարիւն զուարակացն և նոխազացն, ջրով և բրդով, կարմրով և զոպայիւ, զկտակարանօքն իսկ և զա՟մ ժողովրդեամբքն սրսկեաց : *Եւ ասէ : Այս է արիւն կտակին, 20 զոր պատուիրեաց ձեզ Ա՟ծ : *Եւ զխո- 21 րանն և զա՟մ կահ սպասուն, նոյնպէս սրսկեաց զարիւնն : *Եւ գրե- 22 թէ ա՟մ ինչ արեամբ սրբիւր ըստ օրինացն . և առանց հեղման արեան չլինէր թողութիւն : *Ապա հարկ էր օրի- 23 նակացն այնպիսեօքն սրբիլ . և բուն իսկ երկնաւորացն՝ առաւել ևս պատարագօք քան զնոյնս : *Զի ոչ եթէ 24 'ի ձեռագործ սրբութիւնս եմուտ Ք՟ս՝ յօրինակս ճշմարտութեանն . այլ 'ի բուն իսկ յերկինս, յանդիման լինել երեսացն Ա՟յ վասն մեր : *Ոչ զի բազում 25 անգամ մատուցանիցէ զանձն պատարագ՝ որպէս քահանայապետն, որ մտանէր 'ի սրբութիւն սրբութեանցն, ամի ամի արեամբն օտարաւ : *Ապա թէ ոչ՝ 26 պարտ էր նմա բազում անգամ չարչարիլ 'ի սկզբանէ աշխարհի : բայց արդ աւասիկ միանգամ 'ի կատարած յաւիտենից՝ յանարգութիւն մեղաց իւրով պատարագաւն յայտնեցաւ : *Եւ 27 զոր օրինակ կայ մնայ մարդկան միանգամ մեռանիլ՝ և յետ այնորիկ դատաստան : *Նոյնպէս և Ք՟ս միան- 28 գամ մատուցեալ պատարագ առ 'ի բառնալոյ զմեղս բազմաց : իսկ յերկրորդումն առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ՝ որք ակն ունիցին նմա հաւատովք 'ի փրկութիւն :

Margin: ս քերովբէն · Ա 1. Պետ. 1. 19. · 1. Յով. 1. 7. · Յայտ. 1. 5. · Գաղա. 3. 15. · Ելից 24. 8. · օրինա- կացն երկ- նայնոց այնպէս եօրն · Հռով. 5. 9. · 1. Պետ. 3. 18.

## Գլ. Ժ.

Քանզի ստուեր հանդերձելոց 1 բարեացն ունէին օրէնքն, և ոչ զնոյն կերպարան իրացն . ամի ամի զնոյն պատարագս մատուցանեն ցանգ, որք ոչ են կարօղք զմատուցեալսն կա- 2 տարել : *Ապա թէ ոչ՝ դադարէին 'ի մատուցանելոյ . վ՟ն և ոչ մի ինչ այսուհետև զխիղճ մտաց ունելոյ պաշտօ- 3 նէից միանգամ սրբեցելոյն : *Այլ անդէն 'ի նմին 'ի յիշատակս մեղացն 4 կային ամի ամի : *Քանզի ոչ կարէր արիւն նոխազացն և ցլուց բառնալ 5 զմեղս : *Վասն որոյ 'ի մտանել իւր յաշխարհ՝ ասէ : Զզոհս և զպատարագս ոչ կամեցար . բայց զմարմին 6 հաստատեցեր ինձ : *Ընդ ողջակէզս, և ընդ վասն մեղացն ոչ հաճեցար : 7 *Յայնժամ ասացի՝ թէ Ահաւասիկ եկի . 'ի գլուխ գրոց գրեալ է վ՟ն իմ 8 առնել զկամս քո Ա՟ծ : *Վերագոյնն ասէ, թէ ընդ զոհս՝ և ընդ պատարագս՝ և ընդ ողջակէզս՝ և ընդ վ՟ն մեղացն ոչ հաճեցար : և ոչ կամեցար՝ 9 որք ըստ օրինացն մատչէին : *Ապա ասէ՝ Ահաւասիկ գամ առնել զկամս քո Ա՟ծ : մերժէ զառաջինն՝ զի զերկ- 10 րորդն հաստատեսցէ : *Որով կամօք և մեք սրբեցաք՝ 'ի ձեռն պատարագի 11 մարմնոյն Յ՟ի Ք՟ի միանգամ : *Եւ ա՟մ քահանայապետ կայ հանապազորդ 'ի պաշտաման : և զնոյն պատարագս մատուցանէ բազում անգամ, որք ոչ երբէք կարօղք են բառնալ զմեղս : 12 *Իսկ սա զմի վասն մեղաց մատոյց պատարագ . և մշտնջենաւոր նստաւ 13 ընդ աջմէ Ա՟յ : *Եւ այսուհետև ակն ունի, մինչև դիցին թշնամիք իւր 'ի 14 ներքոյ ոտից իւրոց : *Քանզի միով պատարագաւ կատարեաց զսրբեալսն 15 'ի մշտնջենաւորս : *Վկայէ մեզ և Հոգին սուրբ՝ յետ ասելոյն յառաջա- 16 գոյն : *Այս է ուխտն, զոր եդից ընդ հարս նոցա՝ յետ աւուրցն այնոցիկ՝ ասէ Տ՟ր . տաց զօրէնս իմ 'ի սիրտս ն՟ց՝ և 'ի խորհուրդս ն՟ց գրեցից 17 զնոսա : *Ապա ասէ՝ թէ զմեղս ն՟ց, և զանօրէնութիւնս ն՟ց այլ ոչ ևս յիշե- 18 ցից : *Իսկ ուր թողութիւն է, ոչ ևս պիտոյ է վասն մեղաց պատարագ : 19 *Ունիմք այսուհետև եղբարք՝ զհամարձակութիւն 'ի մուտս սրբութեանցն 20 արեամբն Յ՟ի : *Որ նորոգեաց մեզ զճանապարհ նորոգ և կենդանի 'ի ձեռն վարագուրին՝ այսինքն է, մարմնոյ 21 իւրոյ : *Եւ քահանայ մեծ 'ի վերայ 22 տանն Ա՟յ : *Մատիցուք ճշմարիտ սրտիւ, լրութեամբ հաւատոյ, լուացեալ զսիրտս 'ի խղճէ չարեաց, և մրոտեալ 23 զմարմինս 'ի ջուր սրբութեան : *Պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ յու-

Margin: Սաղմ. 39. 7. · Ի գլխոյն · Սաղմ. 109. 2. · 1. Կորն. 15. 25. · Երեմ. 31. 33. · Եբր. 8. 8.

յուսոյն․ (զի հաւատարիմ է՝ որ խոստացաւն։) 24 * Եւ՛ զգուշացարո՛ւք միմեանց յորդորմամբ սիրոյ և գործոց բարեաց։ 25 * Եւ՛ մի՛ թողցուք զժողովս միմեանց, ո՛րպէս և սովոր են ոմանք․ այլ մխիթարեսցուք, և այնչափ ևս առաւել՝ որչափ տեսանիցէք զօրն մերձեալ։ 26 *‖ Զի կամակար մեղք եթէ յանցանիցեմք յետ ընդունելութեան գիտութեան ճշմարտութեան՝ այնուհետև ո՛չևս պիտոյ է վա՛սն մեղաց պատարագ։ 27 * Այլ ահեղ ակնկալութիւն դատաստանին, և նախանձ հրոյն, որ ուտելոց է զհակառակորդսն։ 28 * Արհամարհեալ ուրուք զօրէնսն Մովսէսի, առանց իրիք ողորմութեան ‖ առ երկուք կամ երիւք վկայիւք մեռանիւր։ 29 * Իսկ արդ՝ ո՞րչափ սաստիկ պատժոց արժանի համարիցիք զայն, որ զՈրդին Այ առ ոտն եհար․ և զարիւն նորոյ ուխտին խառնակ համարեցաւ․ որով և սրբեցաւն։ և զՀոգին շնորհաց թշնամանեաց։ 30 * Այլ գիտեմք զայն՝ որ ասաց։ ‖ Իմ են վրէժխնդրութիւնք․ և ես հատուցից՝ ասէ Տր։ և դարձեալ թէ դատէ Տր զժողովուրդ իւր։ 31 * Ահ մեծ է անկանիլ ՚ի ձեռս Այ կենդանւոյ։ 32 * Արդ՝ յիշեցէք զաւուրսն զառաջինս․ յորս լուսաւորեալք՝ բազմաց ճգանց և չարչարանաց համբերէք։ 33 * Մերթ ՚ի նախատինս․ և մերթ ՚ի նեղութիւնս խայտառակեալք։ մերթ կցորդք այնպիսեաց վտանգաւորացն լինիլ։ 34 * Զի և ընդ կապեալս չարչարեցայք․ և զյափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալայք։ քանզի գիտէիք, եթէ լաւագոյն ևս ստացուածս ունիք անձանց յերկինս՝ որ կան, և մնան։ 35 * Արդ մի՛ մերժէք ՚ի ձէնջ զհամարձակութիւնս ձեր, յորում կայ մեծաց վարձուց հատուցումն։ 36 * Պիտոյ է ձեզ համբերութիւն․ զի զկամս Այ արարեալ՝ հասջիք աւետեացն։ 37 *‖ Զի փոքր մի ևս՝ քան որչափ՝ որ գալոցն է՝ եկեսցէ՝ և ո՛չ յամեսցէ։ 38 *‖ Զի արդարն իմ ՚ի հաւատոց կեցցէ։ և եթէ երկմտիցէ, ո՛չ հաճեսցի ընդ նմա անձն իմ։ 39 * Բայց մեք ո՛չ եթէ երկմտութեան եմք ՚ի կորուստ․ այլ հաւատովք ՚ի փրկութիւն հոգւոց։

‖ Եբր. 6. 4. — ‖ 2. Օրէն. 17. 6. Մատթ. 18. 16. Յօհան. 8. 17. 2. Կորն. 13. 1. — ‖ 2. Օրէն. 32. 35. Հռոմ. 12. 19. — համբերեցէք* — ‖ Ամբակ. 2. 4. Հռոմ. 1. 17. ‖ Գաղ. 3. 11.

## ԳԼ. ԺԱ.

1 Զինչ են հաւատք, եթէ ո՛չ յուսացելոց իրաց հաստատութիւն, և յանդիմանութիւն, որոց ո՛չն երևին։ 2 * Զի նովաւ վկայեցան առաջինքն։ 3 *‖ Հաւատովք իմանամք հաստատեալ զյաւիտեանս բանիւն Այ․ յաներևութից զերևելիս եղեալ։ 4 *‖ Հաւատովք զլաւ պատարագս հաբէլ քան զկայէն մատուցանէր Այ․ ‖ որով վկայեցաւ իսկ արդար լինել․ զի ՚ի վն պատարագացն եղև նմա վկայութիւն յԱյ։ զի թէպէտ և մեռաւ ՚ի նմին, սակայն տակաւին խօսի։ 5 *‖ Հաւատովք Ենովք փոխեցաւ՝ զի մի՛ զմահ ճաշակեսցէ։ և ո՛չ ուրեք գտանիւր․ քանզի փոխեաց զնա Ած․ և յառաջ քան զփոխիլն նր վկայեցաւ հաճոյ լինիլ Այ։ 6 * Բայց առանց հաւատոց անհնար է հաճոյ լինիլ Այ։ այլ հաւատալ արժան է այնմ, որ մերձենայ առ Ած՝ թէ է Ած․ և որք խնդրենն զնա՝ լինի պարգևատու։ 7 *‖ Հաւատովք առեալ հրաման Նոյի, վն չևևս երևելեացն՝ զահի հարեալ կազմէր զտապանն ՚ի փրկութիւն տան իւրոյ։ որով դատեաց զաշխարհ․ և հաւատոյն արդարութեան եղև ժառանգաւոր։ 8 *‖ Հաւատովք՝ որ աբրահամն կոչեցաւ՝ ունկնդիր եղև ելանել ՚ի տեղին, զոր առնլոց էր ՚ի ժառանգութիւն․ ել՝ գնաց՝ և ո՛չ գիտէր՝ յո՞ երթիցէ։ 9 * Հաւատովք պանդխտեցաւ յերկրին աւետեաց իբրև յօտարում։ խորանօք բնակեցաւ՝ իսահակաւ և յակոբաւ հանդերձ ժառանգակցօք՝ նոցին աւետեաց։ 10 * Քանզի ակնունէր հիմամբք հաստատելոյ քաղաքին․ որոյ ճարտարապետ և արարիչ Ած է։ 11 *‖ Հաւատովք և ինքն սառա, որ ամուլն կոչեցեալ էր․ զզօրութիւն առնլոյ զսերմն որդեծնութեան, ընդունէր․ և ՚ի տարաժամ հասակի ծնանէր։ քանզի հաւատարիմ համարեցաւ զայն՝ որ խոստացաւն։ 12 * Վասն որոյ և ՚ի միոջէն ծնանէին․ (և այն ՚ի յանցեալ ժամանակի) իբրև զաստեղս երկնից բազմութեամբ․ և իբրև զաւազ առ ափն ծովու առանց թուոյ։ 13 * Ըստ հաւատոյ մեռան ամենեքին սոքա, և չևևս ընկալեալ զաւետիսն․ այլ ՚ի հեռուստ տեսին զնոսա և ցնծացան։ և խոստովան եղեն՝ եթէ օտարք՝ և պանդուխտք են յերկրի։ 14 * Զի որք զայնպիսին խօսին, յայտ առնեն՝ եթէ զգաւառ իւր խնդրեն։ 15 * Զի եթէ զայն յիշէին՝ ուստի ելինն՝ գո՛յր ժամանակ դառնալոյ անդրէն։ 16 * Եւ աւանիկ ազնուագունի իմն ցանկացեալք են, այսինքն է՝ երկնաւորին։ վն որոյ ո՛չ ամօթ համարի Ած՝ կոչիլ նց Ած․ քանզի պատրաստեաց նց զքաղաք։ 17 *‖ Հաւատովք մատոյց աբրահամ ՚ի փորձութեան իւրում՝ զիսահակ պատարագ։ և զմիամօրն մատուցանէր, որոյ զաւետիսն ընկալեալ էր։ 18 * Որում ասացաւն, ‖ թէ իսահակաւ կոչեսցի քեզ զաւակ։ 19 * Եդ ՚ի միտի իւրում, թէ և ՚ի մեռելոց կարող է յարուցանել Ած։ ուստի և յառակս ընկալաւ զնա։ 20 *‖ Հաւատովք վն հան-

դեր-

աներևութից. — ‖ Ծննդ. 1. 3. — ‖ Ծննդ. 4. 4. — ‖ Մատթ. 23. 35. — ‖ Ծննդ. 5. 21. Սիրաք. 44. 16. — ‖ Ծննդ. 6. 14. Սիրաք. 44. 17. — ‖ Ծննդ. 12. 1. — ‖ Ծննդ. 17. 19. — ‖ Ծննդ. 22. 1. Սիրաք. 44. 21. — ‖ Ծննդ. 21. 12. Հռոմ. 9. 7. — ‖ Ծննդ. 27. 27. և 39.

դերձելոյ իւրոց օրհնեաց Իսահակ զՅակոբ և զԵսաւ ։ 21 *Հաւատովք Յակոբ ՚ի մեռանելն իւրում, զիւրաքանչիւրոք յորդւոցն Յովսեփու օրհնեաց՝ և երկիր եպագ ՚ի ծայր գաւազանի իւրոյ ։ (Ծննդ. 48. 15. Ծննդ. 47.31.)

22 *Հաւատովք Յովսեփ ՚ի վախճանելն իւրում յիշեաց զելս որդւոցն Իլի, և վս ոսկերաց իւրոց պատուիրեաց ։ (Ծննդ. 50. 23.)

23 *Հաւատովք Մովսէս իբրև ծնաւ, թաքուցաւ ամիսս երիս ՚ի հարց իւրոց ։ քանզի տեսին կայտառ զմանուկն ։ և ոչ զանգիտեցին ՚ի հրամանէ թագաւորին ։ (Ելից 2. 2. Ելից 1.17.)

24 *Հաւատովք Մովսէս իբրև անձեաց՝ ուրացաւ կոչել որդի դստերն փարաւոնի ։ (Ելից 2. 11.) 25 *Լաւ համարեցաւ չարչարել ընդ ժողովրդեանն Այ․ քան առ ժամանակ մի վայելել ՚ի մեղս ։ 26 *Կարևոր համարեցաւ զնախատինսն Քի․ քան զմեծութին գանձուցն եգիպտացւոց ։ քանզի հայեցեալ ակն ունէր վարձուցն հատուցման ։ 27 *Հաւատովք թողոյր զերկիրն եգիպտացւոց ։ և ոչ երկնչէր ՚ի ցասմանէ թգւորին ։ զի զաներևոյթն իբրև զտեսեալ համբերութբ համարեցաւ ։

28 *Հաւատովք արար զզատիկն և զհեղումն արեան ։ զի մի սատակիչ անդրանկացն մերձեսցի ՚ի նոսա ։ (Ելից 12.21.)

29 *Հաւատովք անցին ը̅ն ծովն կարմիր՝ իբրև ընդ ցամաք երկիր ։ զորոյ զփորձ առեալ եգիպտացւոցն՝ ընկղմեցան ։ (Ելից 14. 22.)

30 *Հաւատովք պարիսպքն երիքովի անկան ։ շուրջ եկեալ զնոքօք զեօթն օր ։ (Յեսու 6. 20.) 31 *Հաւատովք Ռախաբ պոռնիկ ոչ կորեաւ ընդ անհաւատսն, ընկալեալ զլրտեսսն խաղաղութբ ։ (Յեսու 2. 1.) 32 *Եւ արդ՝ զի՞նչ ևս ասացից ։ զի չէ բաւական ժամանակս պատմելոյ վս Գեդէոնի, Բարակայ, Սամփսոնի, Յեփթայայ, Դաւթի, Սամուէլի, և այլոց մարգարէից ։ 33 *Որք հաւատով պարտեցին զթագաւորութիւնս ։ գործեցին զարդարութին ։ հասին աւետեաց ։ խցին զբերանս առիւծուց ։ 34 *Շիջուցին զզօրութին հրոյ ։ ապրեցան ՚ի բերանոյ սրոյ ։ զօրացան ՚ի տկարութենէ ։ եղեն զօրաւորք ՚ի պատերազմի ։ առին զբանակս օտարաց ։ 35 *Ընկալան կանայք ՚ի յարութենէ զմեռեալս իւրեանց ։ կէսք կոչկոճեցան, և չև ևս ընկալեալք զփրկութին ։ զի լաւագոյն յարութե հասանիցեն ։ (ոչ ընկալեալք) 36 *Եւ կէսք զտանջանաց և զգանից զփորձ առին, զկապանաց և զբանտից ։ 37 *Քարկոծեցան ։ տղոցեցան ։ փորձեցան ։ սպանմամբ սրոյ մեռան ։ շրջեցան լեշկ մաշկօք՝ և մորթօք այծենեօք ։ կարօտեալք նեղեալք ։ չարչարեալք ։ 38 *Որոց ոչ էր արժան աշխարհս ։ յանապատի մոլորեալք՝ ՚ի լերինս՝ և յայրս՝ և ՚ի փապարս երկրի ։ (Յոր ոչ արժէ աշխարհ.)

Ձխդ

39 *Եւ սոքա ամենեքեան վկայեալք ՚ի հաւատոյն ։ չև ևս ընկալան զաւետիսն ։ (ոչ ընկա_) 40 *Այ վս մեր լաւագոյն համարեալ, (լաւ) զի մի առանց մեր կատարեսցին ։

## ԳԼ: ԺԲ:

1 Այսուհետև և մեք՝ որք այսչափ շուրջ զմեօք մածեալ ունիմք զբազմութին վկայից, զհպարտութին զամ ՚ի բաց ընկեցուք, և զմեղսն կարևորս ։ համբերութբ ընթասցուք ՚ի պատերազմն՝ որ առաջի կայ մեզ ։ (Հռովմ. 6. 4. Եփեսո. 4.22.)

2 *Հայեսցուք ՚ի զօրագլուխն հաւատոյ, և ՚ի կատարիչն Յս․ որ փոխանակ մխիթարութեն, որ նմա առաջի կայր՝ յանձն էառ զխաչ ։ արհամարհեաց զամօթ, նստաւ ընդ աջմէ աթոռոյն Այ ։ (Կողոս. 3. 8. 1.Պետ. 2. 1. և 4. 2.)

3 *Ածէք զմտաւ, որ զայսպիսի համբերութին ՚ի մեղաւորաց հակառակութենէ անտի կրեաց ։ զի մի աշխատք լինիցիք անձամբք ձերովք՝ և լքանիցիք ։ 4 *Զի չև ևս արեամբ չափ պատերազմեալ՝ հակառակ կայք մեղացն ։ 5 *Եւ մոռացայք զմխիթարութիւնն, որ ընդ ձեզ՝ իբրև ընդ որդեակս խօսի ։ որդեակ իմ՝ մի լքանիր ՚ի խրատու Տն․ և մի վհատիցիս՝ յանդիմանեալ ՚ի նմանէ ։ (Առակ. 3.11.) 6 *Զի զոր սիրէ Տր՝ խրատէ ։ տանջէ զամ որդի, զոր ընդունի ։ (Յայտ. 3. 19.) 7 *Ի խրատու համբերութե կայք ։ իբրև յորդիս մատուցեալ է ՚ի ձեզ Ած ։ ո՞ր 8 որդի է, զոր ոչ խրատիցէ հայր ։ *Զի եթէ առանց խրատու լինիցիք, որով ամենեքին բաժանորդք եղեն ։ ապա 9 խորդք իցէք՝ և ոչ որդիք ։ *Զի թէ ՚ի մարմնաւոր հարցն մերոց՝ զորս ունիմք խրատիչս, պատկառէիմք ։ ո՞րչափ ևս առաւել հնազանդիցուք Հօրն հոգւոց՝ 10 և կեցցուք ։ *Զի սոքա առ սակաւ ժամանակս ըստ կամաց իւրեանց խրատէին ։ իսկ նա վս օգտի, առ յընդունելոյ զսրբութի նր ։ 11 *Ամ խրատ առ ժամանակն ոչ ուրախութե թուի, այլ տրտմութե ։ բայց յետոյ պտուղ խաղաղութե նովաւ կրթելոցն հատուցանէ յարդարութին ։

12 *Վս որոյ զձեռս լքեալս՝ և զծունկս 13 կթոտս հաստատեցէք ։ *Եւ զշաւիղս ուղիղս արարէք ոտից ձերոց ։ զի մի որ կաղն իցէ՝ գլորիցի ։ այլ մանաւանդ 14 բժշկեսցի ։ *Զխաղաղութե զհետ երթայք ընդ ամենեսին, և զսրբութե ։ առանց որոյ ոչ ոք տեսանէ զՏր ։ (Հռովմ. 12. 18.)

15 *Զգոյշ լերուք՝ գուցէ ոք յետնեալ գտանիցի ՚ի շնորհացն Այ ։ մի ոք արմատ դառնութե ՚ի վեր երևեալ նեղիցէ՝ և նովաւ բազումք պղծիցին ։

16 *Մի ոք պոռնիկ՝ կամ պիղծ իբրև Եսաւ ։ որ ընդ միոյ կերակրոյ զանդրան (Ծննդ. 25.33.)

կութիւն վաճառեաց։ * Գիտէք՝ զի 17 յետոյ կամեցաւ ժառանգել զօրհնութիւնն, խոտան գտաւ․ զի ապաշխարութեան տեղի ոչ եգիտ․ թէպէտ և արտասուօք խնդրեաց զնա։ *Զի ոչ 18 էք մատուցեալ առ լեառն շօշափելի որ հրով վառեալ էր, և մըգով, և մառախլով, և խաւարաւ, և մրրկաւ։ * Եւ 19 փողոյ հնչեր՝ և բարբառ պատգամացն․ ուստի՝ որք լուանն, հրաժարեցան, զի մի կրկնեսցի առ նոսա բանն․ * Զանզի 20 ոչ հանդարտէին հրամանին․ Թէպէտ և գազան մերձենայր ՚ի լեառն՝ քարկոծ լինէր։ * Եւ այնպէս ահագին էր տե- 21 սիլն․ զի և մովսէս ասէր․ եթէ զահի հարեալ եմ, և դողամ։ * Այլ մատուցեալ 22 էք ՚ի սիոն լեառն, և ՚ի քաղաք Այ կենդանւոյ՝ յԵմ յերկինս․ և ՚ի բիւրաւոր բանակս հրեշտակաց։ * Եւ յեկեղեցիս 23 անդրանկաց գրելոց յերկինս․ և առ դատաւորն ամենեցուն Այ․ և յոգիս արդարոց կատարելոց։ * Եւ ՚ի նորոյ 24 կտակարանաց միջնորդն Յս․ և ՚ի հեղումն արեանն Քի՝ որ առաւել խօսի քան զհաբէլին։ * Զգոյշ լերուք՝ գուցէ 25 հրաժարիցէք յայնմանէ՝ որ խօսեցաւն․ զի եթէ նոքա ոչ կարացին զերծանել հրաժարեալք յայնմանէ՝ որ յերկրի հրաման տայր․ որչափ ևս առաւել մեք, եթէ յերկնաւորէն թիկունս դար ձուցանիցեմք։ * Որոյ ձայնն զերկիր 26 շարժեաց յայնժամ, և այժմ խոստացեալ է՝ և ասէ․ միւս անգամ շարժեցից․ ոչ միայն զերկիր՝ այլ և զերկինս։ * Այլ միւսանգամն յայտ առնէ զշար 27 ժելոցն, իբրև զեղելոց փոփոխումն․ զի հաստատունն կացցեն անշարժքն։ * Սմ 28 որոյ զթագաւորութիւն անշարժ ընկալեալ, պինդ կալցուք զշնորհսն, որով պաշտեմք զԱծ հաճութեամբ ահիւ, և դողու թեամբ։ * Զանզի Այ մեր հուր ծախիչ է։ 29



Եղբայրսիրութիւն հաստատեսցի առ 1 ձեզ։ * Զօտարասիրութիւն մի 2 մոռանայք․ զի այնու ոմանք յանդէտս ընկալան զհրեշտակս։ * Յուշ լիցին 3 ձեզ կապեալքն՝ որպէս թէ դուք ընդ նոսա կապեալք իցէք․ և չարչարեալքն, որպէս և դուք իսկ մարմնաւորք էք։ * Պատ- 4 ուական է ամուսնութիւն․ և սեր անկո- ղինն․ բայց զպոռնիկս և զշունս դատէ Այ։ * Եւ արք անարծաթասերք լինի- 5 ցին․ բաւական համարիլ որչափ ինչ ՚ի ձեռս իցէ․ քանզի ինքն իսկ ասաց․ ոչ թողից զքեզ՝ և ոչ ընդ վայր հա րից։ * Որպէս զի համարձակ լիցուք ասել․ 6 Տր է իմ օգնական, և ոչ երկեայց՝

7 զի՞ արասցէ ինձ մարդ։ * Յիշեցէք զառաջնորդս ձեր, որք խօսեցան ձեզ զբանն Այ․ հայեցեալք յելս գնացից նց։ նմանօղք եղերուք հաւատոյն։ 8 * Յս Քս երէկ՝ և այսօր․ նոյն և յաւի 9 տեանս։ * Յուսմունս պէսպէս, և օտարաձայնս մի դանդաչէք։ զի լաւ է շնորհօք հաստատել զսիրտս՝ և ոչ կե րակրօք․ որովք ոչինչ օգտեցան, որք 10 այնպէսն գնացին։ * Ունիմք մեք զսե ղան, ուստի ոչ ունին իշխանութիւն ճաշակել, որք պաշտեն զպաշտօն խո 11 րանին։ * Զի որոց անասնոց մատ չիւր արիւնն ՚ի սրբութիւն վասն մե ղաց ՚ի ձեռն քահանայապետին, նո ցունց մարմինքն այրեին արտաքոյ բա 12 նակին։ * Սմ որոյ և Յս՝ զի սրբեսցէ իւրով արեամբն զժողովուրդն, ար 13 տաքոյ դրանն չարչարեցաւ։ * Արդ՝ ելցուք ելցուք առ նա արտաքոյ բանա կին․ առեալ յանձն զնախատինս նր։ 14 * Զանզի ոչ եթէ ունիմք զքաղաք՝ որ աստէն մնալոց իցէ․ այլ զհանդերձ 15 եալսն խնդրեմք։ * Արդ ՚ի ձեռն նր մատուցուք զպատարագ օրհնութեան յամ ժամ Այ․ այսինքն է՝ զպտուղ շրթանց խոստովանողաց յանուն նր։ 16 * Զբարերարութիւն և զհաղորդութիւն մի մոռանայք․ զի ընդ այնպիսի պատա 17 րագս հաճի Այ։ * Անսացէք ասացէք լերուք առաջնորդաց ձերոց․ և հպատակ կա 18 ցէք նց։ * Զի նոքա տքնին վն ոգւոց ձերոց՝ որպէս թէ համարս տալոց իցեն ձեր․ զի խնդութբ արասցեն զայն՝ և մի յոգւոց հանելով։ զի այն ոչ յօ գուտ ձերէ։ Աղօթս արարէք վասն մեր․ զի հաստատեալ գիտեմք եթէ բարւոք միտս ունիմք․ յամի կամիմք 19 բարւոք գնալ գնալս ցուցանել։ * Եւ ա ռաւել աղաչեմ, զի զայն առնիցէք, զի վաղագոյն պատասպարեցայց ձեզ։ 20 * Եւ Ած խաղաղութեան՝ որ եհան ՚ի մե ռելոց զհովիւն հօտից զմեծն արեամբ յաւիտենականի ուխտին զՏր մեր Յս 21 Քս։ * Հաստատեսցէ զձեզ ՚ի գործս բարութեան առնել զկամս նր․ և արասցէ ՚ի մեզ զհաճոյսն առաջի իւր ՚ի ձեռն Յի Քի․ որում փառք յաւիտեանս․ 22 Ամէն։ * Աղաչեմ զձեզ եղբարք՝ ան սալ բանիս մխիթարութեան․ քանզի սա 23 կաւուք գրեցի ձեզ․ * Եւ ճանաչէք զեղբայրն մեր զտիմոթէոս զարձա կեալն (առ ձեզ)․ ընդ որում, եթէ վա 24 ղագոյն գայցէ, տեսից զձեզ։ * Ողջոյն տաջիք ամ առաջնորդաց ձերոց․ և ամ սրբոց։ ողջոյն տան ձեզ՝ որք ՚ի կող 25 մանս իտալիացւոց են։ * Շնորհք ընդ ամենեսին ձեզ։ Ամէն։

ԹԱՄԻ․Թ․

# ԹՈՒՂԹ ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՅԱԿՈԲՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ։

Գլուխ Առաջներորդ։

ԱԴ

1 ՅԱԿՈԲՈՍ ԱՍՏՈՒԾՈՅ և Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի ծառայ. երկոտասան ազգացդ, որք 'ի սփիւռս էք՝ ողջոյն։ * 2 Ամ՟ ուրախութե՟ արժանի համարիջիք եղբարք, յորժամ 'ի պէսպէս փորձութի՟ 'ի մէջ անկանիցիք։ * 3 ‖ Գիտասջիք՝ զի հանդէս ձերոյ հաւատոյն յօրինեալ գործէ զհամբերութի՟։ * 4 Իսկ համբերութի՟ն զգործ կատարեալ ունի. զի իցէք ողջամանդամք և կատարեալք. և ոչինչ իւիք նուազեալք։ * 5 Ապա թէ ոք 'ի ձէնջ իցէ նուազեալ յիմաստութե՟, խնդրեսցէ յԱ՟յ, որ տայ ամի առատապէս՝ և ոչ նախատէ. և տացի նմա։ * 6 ‖ Բայց խնդրեսցէ հաւատովք՝ և մի երկմտեսցէ։ զի որ երկմիտն է՝ նման է հողմակոծեալ և տատանեալ ալեաց ծովու։ * 7 Մի՟ ակնկալցի մարդն այն առնուլ ինչ յԱ՟յ։ * 8 Զի այր երկմիտ՝ առանց հաստատութե՟ է յամ ճանապարհս իւր։ * 9 Պարծեսցի եղբայր խոնարհ 'ի բարձրութի՟ իւր։ * 10 Եւ՟ որ մեծատունն իցէ՝ 'ի խոնարհութի՟ իւր։ ‖ քանզի իբրև զծաղիկ խոտոյ անցցէ։ * 11 Զի ծագեցաւ արև հանդերձ խորշակաւ՝ և ցամաքեցոյց զխոտն. և թօթափեցաւ ծաղիկ ն՟ր. և կորեաւ վայելչութի՟ երեսաց նորա։ նոյնպէս և մեծատունն հանդերձ շահիւքն իւրովք թարշամեսցի։ * 12 ‖ Երանեալ է այր՝ որ համբերիցէ փորձանաց։ զի եթէ ընտիր ևս գտանիցի, առցէ զպսակն կենաց, զոր խոստացաւ սիրելեաց իւրոց։

‖ Հռոմ. 5. 3. ‖ Մատ. 7. 7. և 21. 22. Մարկ. 11. 24. Ղուկ. 11. 9. Յոհ. 14. 13. և 16 23. 24. ‖ Սիրաք. 14. 18. Եսայ. 40. 6. 1. Պետ. 1. 24. ‖ Յոբ. 5. 17.

զի յորժամ ընտիր

ԱԵ

13 * Մի՟ ոք որ 'ի փորձութե՟ իցէ, ասասցէ՝ թէ յԱ՟յ փորձիմ. զի Ա՟ծ անփորձ է չարաց։ փորձէ նա և ոչ զոք։ * 14 Իւրաքանչիւրոք փորձի առ յիւրոց ցանկութեց ձգեալ և պատրեալ։ * 15 Ապա այնուհետև ցանկութի՟ն յղացեալ՝ զմեղս ծնանի։ և մեղքն կատարեալ՝ զմահ ծնանի։ * 16 Մի՟ խաբիք եղբարք իմ սիրելիք։ * 17 Ամ՟ տուրք բարիք՝ և ամ՟ պարգևք կատարեալք 'ի վերուստ են իջեալք առ 'ի Հօրէն լուսոյ։ յորում չիք փոփոխումն՝ և կամ շրջելոյ ստուեր։ * 18 Կամեցեալ ծնաւ զմեզ բանիւ ճշմարտութե՟՝ լինիլ մեզ պտուղ ինչ ստացուածոց ն՟ր։ * 19 Գիտասջիք եղբարք իմ սիրելիք։ ‖ Եղիցի ամենայն մարդ երագ առ 'ի լսել՝ և ծանր առ 'ի խօսել. և ծանր առ 'ի բարկանալ։ 20 * Զի բարկութի՟ մարդոյ զարդարութի՟ Ա՟յ ոչ գործէ։ * 21 Վասն որոյ 'ի բաց թօթափեալ զամ աղտեղութիւն, և զյաւելուած չարեաց՝ հեզութը ընդունիջիք զբանն ընդաբոյս. որ կարօղն է կեցուցանել զոգիս ձեր։ * 22 ‖ Լինիջիք առնօղք բանին. և մի լսօղք միայն համարեսջիք զանձինս։ * 23 Զի թէ ոք լսօղ միայն իցէ բանին՝ և ոչ առնօղ. նման է նա մարդոյ՝ որ պշուցեալ հայիցի ընդ երեսս իւր՝ որ ծնանիցի 'ի հայելւոջ։ * 24 Զի հայեցեալ ետես զինքն՝ և զանց արար. և անդէն մոռացաւ թէ որպիսի ոք էր։ * 25 Իսկ որ յառեալ 'ի կատարեալ օրէնս ազատութե՟ն հայիցի, և 'ի նմին կացցէ՝ ոչ եղև նա լսօղ մոռացութե՟՝ այլ առնօղ գործոյն։ նա 'յառնելն իւրում լիցի երա-

առեղծուածոց ‖ Առակ. 17. 27. ‖ Մատ. 7. 21. Հռոմ. 2. 13.

նելի։ *Եթէ ոք կամիցի կրօնաւոր լինել՝ և ոչ սանձահարիցէ զլեզու իւր՝ այլ զբաղեցուցանիցէ զսիրտ իւր՝ այնպիսւոյն վայրապար է կրօնաւորութիւն։ 26
*Կրօնաւորութիւն սուրբ և անարատ՝ առ Ա̃յ, և 'ի Հօրէ՝ այս է ։ այցելու լինել որբոց, և այրեաց 'ի նեղութեան իւրեանց ․ անարատ պահել զանձն յաշխարհէ։ 27

## Գլ․ Բ․

Եղբարք իմ, մի՛ աչառութեամբ ունիցիք զհաւատսն Տ̃ն մերոյ Յ̃ի Ք̃ի, որ Տ̃ն է փառաց։ 1
*Եթէ մտցէ 'ի ժողովուրդ ձեր այր՝ որ ունիցի զմատանի ոսկի՝ և հանդերձս պայծառս․ մտանիցէ և աղքատ ոք՝ 'ի հանդերձս աղտեղիս։ 2
*Հայիցիք ընդ այն՝ որ ունիցի զհանդերձն պայծառս, և ասիցէք՝ եթէ դու նիստ աստ պատուով․ և աղքատն ասիցէք՝ եթէ յոտն կաց դու այտի․ կամ թէ՝ Եկ, նիստ առ պատուանդանի իմում։ 3
*Ո՞չ խղճիցէք յանձինս՝ և լինիցիք դատաւորք չարեաց խորհրդոց։ 4
*Լուարո՛ւք ինձ եղբարք իմ սիրելիք․ ո՞չ Ա̃ծ ընտրեաց զաղքատս աշխարհիս, որք են մեծատունք հաւատովք՝ և ժառանգաւորք արքայութեանն՝ զոր խոստացաւ սիրելեաց իւրոց։ 5
*Եւ դուք անարգէք զաղքատս։ Ո՞չ մեծատունքն յաղթահարեն զձեզ՝ և նոքա քարշեն զձեզ 'ի դատաստան։ 6
*Ո՞չ նոքա հայհոյեն զբարւոք անունն՝ որ կոչեցեալ է 'ի վ̃ր ձեր։ 7
*Ապա թէ զօրէնսն կատարիցէք զարքունականս ըստ գրոց։ Եթէ սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո՝ բարւոք առնէք։ 8
*Իսկ եթէ աչառիցէք, մեղս գործէք՝ յանդիմանեալք յօրինացն իբրև օրինազանցք։ 9
*Որ ոք զամենայն օրէնսն պահիցէ, և միով իւիք ինչ գթիցէ՝ եղև ամ̃ օրինացն պարտական։ 10
*Զի որ ասացն՝ թէ մի՛ սպանանիցես՝ ասաց թէ՝ և մի՛ շնայցես․ զի եթէ սպանանիցես ոչ, բայց շնայցես՝ եղեր յանցաւոր օրինացն։ 11
*Այնպէս խօսեցարո՛ւք՝ և այնպէս արարէ՛ք՝ որպէս զի ազատութեան օրինօքն իցէք դատելոց։ 12
*Զի անողորմ դատաստան լինելոց է այնմ, որ ոչ առնիցէ զողորմութիւն․ քանզի բարձրագլուխ պարծի ողորմութիւն առ դատաստանաւ։ 13

*Զի՞նչ օգուտ իցէ եղբարք իմ, եթէ ասիցէ ոք հաւատս ունել՝ և գործս ոչ ունիցի․ միթէ կարիցէ՞ն հաւատքն ապրեցուցանել զնա։ 14
*Եթէ եղբայր ոք, կամ քոյր իցեն մերկք՝ կամ 15
կարօտեալք աւուրն կերակրոյ։ 16 *Ասիցէ ոք 'ի ձէնջ ցնոսա․ գնացէք խաղաղութեամբ, ջեռարո՛ւք, և յագեցարո՛ւք․ և տայցէք ո՛չ նոցա զպէտս մարմնոյն՝ զի՞նչ օգուտ իցէ։
17 *Այնպէս և հաւատք եթէ գործս ոչ ունիցին, մեռեալք են առանձինն։
18 *Այլ թերևս ասիցէ ոք․ եթէ դու հաւատս ունիս՝ և ես գործս ունիմ․ ցո՛յց ինձ զհաւատսն քո առանց գործոց․ և ես ցուցից՝ քեզ 'ի գործոց իմոց զհաւատս իմ։
19 *Դու հաւատաս՝ զի մի է Ա̃ծ․ բարւոք առնես․ և դևք հաւատան, և սարսին։
20 *Կամի՞ս գիտել ո՛վ մարդ սնոտի, զի հաւատք առանց գործոց մեռեալ են։
21 *Աբրահամ հայր մեր՝ ո՞չ ապաքէն 'ի գործոց արդարացաւ՝ հանեալ 'ի սեղան զորդին իւր զիսահակ պատարագ։
22 *Տեսանե՞ս, զի հաւատքն եղեն գործակիցք գործոց նորա․ և 'ի գործոց անտի հաւատքն կատարեցան։
23 *Եւ կատարեցաւ գիրն՝ որ ասէ․ Հաւատաց աբրահամ յԱ̃ծ․ և համարեցաւ նմա յարդարութիւն․ և կոչեցաւ բարեկամ Ա̃յ։
24 *Տեսանէ՞ք, զի 'ի գործոց արդարանայ մարդ՝ և ո՛չ 'ի հաւատոց միայն։
25 *Սոյնպէս և Ռախաբ պոռնիկ՝ ո՞չ ապաքէն 'ի գործոց արդարացաւ․ ընկալեալ զլրտեսսն՝ ընդ այլ ճանապարհ արձակեաց։
26 *Զոր օրինակ մարմին առանց հոգւոյ մեռեալ է․ սոյնպէս և հաւատք առանց գործոց մեռեալ են։

## Գլ․ Գ․

1 Մի՛ բազում վարդապետք լինիք եղբարք իմ, գիտասջի՛ք՝ զի մեծ դատաստան ընդունելոց եմք․
2 *Քանզի բազում ինչ յանցանեմք ամենեքեան․ եթէ ոք բանիւ ոչ յանցանիցէ՝ նա է մարդ կատարեալ՝ որ կարող է սանձահարել զամ̃ մարմին իւր։
3 *Տե՛ս՝ զի ձիոց սանձս 'ի բերան դնեմք առ 'ի անսալոյ նց̃ մեզ․ և զամ̃ մարմինս նց̃ նուաճեմք։
4 *Ահաւասիկ և նաւք՝ որպիսիք ինչ են, և 'ի սաստիկ հողմոց վարին․ և փոքր թևովն շրջին յոր կոյս և միտք ուղղչին կամիցին։
5 *Այնպէս և լեզու փոքր ինչ անդամ է՝ և զմեծամեծս բարբառի ․ ահա և սակաւ ինչ հուր զորպիսի անտառս հրդեհէ․
6 *Եւ լեզու հուր՝ զարդ անիրաւութե̃․ լեզու հաստատեալ է յանդամս մեր՝ որ զամ̃ մարմինն ապականէ՝ և վառէ հրով զանիւ ծննդեան․ և բորբոքեալ
7 տոչորի 'ի գեհենի։ *Ամենայն բնութիւն գազանաց՝ և թռչնոց՝ և սողնոց՝ և որք 'ի ծովու են, հնազանդեալք են՝ և

և հնազանդին մարդկեղէն բնութեն։ *Բայց զլեզու մարդկան ոչոք կարէ 8 հնազանդել զչարն՝ և զանկարգ՝ և զլի թունոց մահաբերին։ *Նովաւ օրհ 9 նեմք զՏ՟ն և զՀ՟այր. և նովաւ անիծանեմք զմարդիկ՝ որք ըստ նմանութեն Ա՟Յ արարան։ *Ի նմին բերանոյ 10 ելանեն օրհնութիք և անէծք. ոչ է պարտ եղբարք իմ, այսմ այսպէս լինել։ *Մի թէ աղբիւր անդստին 'ի 11 միոյ ականէն բղխիցէ՞ քաղցր և դառն։ *Մի թէ մարթ ինչ իցէ եղբարք իմ, 12 թզենւոյ ձէթ բերել. կամ որթոյ թուզ։ և ոչ աղտաղտին տեղւոջ ջուր քաղցր առնել։

խաղող բերել

ԻԲ

*Ո՞վ իցէ 'իմաստուն և հանճարեղ 'ի 13 ձեզ։ ցուցցէ 'ի բարւոք գնացից ըզ գործս իւր հեզութե՟ իմաստութենն։ *Ապա եթէ նախանձ՝ և դառնութի՟ 14 և հակառակութի՟ ունիցիք 'ի սիրտս ձեր, մի՛ պարծիք ստել առնել զճշմարտութին։ *Ո՛չ է իմաստութի՟ս այս 15 իջեալ 'ի վերուստ. այլ երկրաւոր՝ շնչաւոր՝ և դիւական։ *Զի ուր հեռ, 16 և նախանձ. անդ է անկարգութի՟, և ա՟մ իրք չարք։ *Իսկ վերին իմաս 17 տութին, նախ զի սուրբ է՝ ապա խաղաղարար, հեզ՝ դիւրահաւան՝ լի՛ ողորմութե՟, և պտղովք բարեաց. անխիղճ. առանց կեղծաւորութեան։ *Պտուղ արդարութե՟, խաղաղու 18 թե՟ սերմանի այնոցիկ՝ որք առնեն զխաղաղութի՟։

## ԳԼ: Դ։

Ուստի՞ պատերազմունք՝ և ուստի՞ 1 կռիւք 'ի ձեզ։ ո՞չ յայսմխնեայց ցանկութեց ձերոց՝ որք զօրացեալք են յանդամս ձեր։ *Ցանկայք՝ և ո՛չ 2 ունիք. սպանանէք՝ և նախանձիք՝ և ո՛չ կարէք հասանել. պատերազմիք՝ կռուի՛ք՝ և ո՛չ ունիք. վասն զի ո՛չ խնդրէք։ *Խնդրէք՝ և ո՛չ առնուք՝ վ՟ն զի 3 չարաչար խնդրէք։ զի անդէն 'ի ցանկութի՟ս ձեր մաշիջիք։ *Շնացողք՝ 4 ո՞չ գիտէք՝ զի սէր աշխարհիս թշնամութի՟ է առ Ա՟Ծ. զի որ ոք կամիցի սիրել զաշխարհ՝ թշնամի առնէ զանձն Ա՟Յ։ *Կամ թէ վայրապա՞ր համարի 5 ցիք՝ զոր ասէ գիր. առ նախանձ ինչ՝ որում փափագի հոգի՝ որ բնակեցաւ 'ի մեզ։ *Տալ զառաւել շնորհսն։ վ՟ն 6 որոյ ասէ. ‖Տ՟ր ամբարտաւանից հակառակ կայ՝ տայ շնորհս խոնարհաց։ *Հնազանդեցարո՛ւք այսուհետև Ա՟Յ՝ 7 և կացէ՛ք հակառակ չարախօսին. և լիցի փախստական առ 'ի ձէնջ։ *Մերձեցա 8 րո՛ւք առ Ա՟Ծ և մերձեսցի առ ձեզ։

‖Առակ 3. 34. 1. Պետ. 5. 5.

Սրբեցէ՛ք զձեռս, մե՛ղաւորք. և ուղիղ 9 արարէ՛ք զսիրտս՝ երկմիտք։ *Տառապեցարո՛ւք՝ սգացարո՛ւք՝ և լացէ՛ք. ծաղր ձեր 'ի սուգ դարձցի. և ուրա 10 խութի՟ ձեր 'ի տրտմութի՟։ *‖Խոնարհ հեցարո՛ւք առաջի Տ՟ն և բարձրացուս 11 ցէ զձեզ։ *Մի՛ բամբասէք զմիմեանս եղբարք. որ բամբասէ զեղբայր՝ կամ դատէ զեղբայր իւր՝ զօրէնսն բամբասէ՝ և զօրէնսն դատէ։ և եթէ զօրէնսն դատիցես՝ ո՛չ առնօղ օրինացն ես՝ այլ 12 դատաւոր։ *Մի է օրէնսդիր և դատաւոր՝ որ կարօղն է փրկել և կորու 13 սանել։ *‖Դու ո՞վ ես՝ որ դատես զըն կերն։ Ահաւասիկ են. որք ասեն. այսօր՝ և վաղիւ՛ երթիցուք յայս անուն քաղաք. եղիցուք անդ տարի մի. վա 14 ճառեսցուք, և շահեսցուք։ *Որք ո՛չ 15 գիտէք զվաղիւն։ *Որպիսի՛ ինչ են կեանք ձեր. զի իբրև զմրրիկ էք. որ առ սակաւ մի երևեալ՝ և ապա ապականեալ։ փոխանակ զի ասիցէք՝ եթէ Տ՟ր կամեսցի՝ և կեցցուք, արասցուք զայս 16 ինչ՝ կամ զայն։ *Իսկ արդ պարծիք յամբարտաւանութե՟ ձերում. ա՟մ այսպիսիք պարծանք չարութե՟ են։ 17 *Որոց գիտիցէ զբարին, և ո՛չ առնիցէ՝ մեղք են նմա։

ԻԳ

‖1. Պետ. 5. 6.

‖Հռոմ. 14. 4.

## ԳԼ: Ե։

1 Արդ՝ այսուհետև մեծատունք լացէ՛ք՝ և ողբացէ՛ք 'ի վերայ թշուառութեացն, որք գալոց են 'ի վերայ ձեր։ 2 *Զի մեծութի՟դ ձեր ոչինչ է. և համ 3 դերձ ձեր կերակուր ցեցոյ։ *Արծաթ ձեր և ոսկի ժանգահար՝ և ժանգ նո՟ց լիցի ձեզ 'ի վկայութիւն. և կերիցէ զմարմինս ձեր. իբրև զհուր գանձե 4 ցէք աւուրցն յետնոց։ *Ահաւասիկ վարձք մշակաց՝ որք գործեն զանդս ձեր, առ ձեզ են. զրկեալն 'ի ձէնջ աղաղակէ. և բողոք հնձողացն եհաս 5 յականջս Տ՟ն զօրութեց։ *Փափկացայք 'ի վ՟ր երկրի՝ և զբօսայք։ սնուցէք զսիրտս ձեր իբրև աւուր սպան 6 ման։ *Որկեցիք, սպանիք զարդարն. 7 որ ո՛չ կայր ձեզ հակառակ։ *Երկայնամիտ լերո՛ւք եղբարք իմ մինչև 'ի գալուստն Տ՟ն։ ահա մշակ երկայնամտեալ սպասէ պատուական պտղոյն երկրի. մինչև առցէ զկանուխ և զանագանն։ 8 *Երկայնամտեցէ՛ք և դուք. և հաստատեցէ՛ք զսիրտս ձեր. զի գալուստ Տ՟ն 9 մերձեալ է։ *Մի՛ տրտմեցուցանէք զմիմեանս եղբարք՝ զի մի՛ դատիցիք. ահաւասիկ դատաւորն առ դուրս կայ։ 10 *Օրինակ առէք, եղբարք՝ չարչարանաց և երկայնմտութե՟ զմարգարէսն՝

ԻԴ

գանձեցէք

սնուցէք

որք

որք խօսեցան յանուն Տն։ * Ահաւասիկ երանեմք համբերողաց։ զհամբերութիւն Յոբայ լուարուք՝ և զկատարումն Տն տեսէք. զի բազմագութ է Տր՝ և ողորմած։ (11)

ըղձայ. պետնէ.

Ք Ն

* Յառաջ քան զամենայն ինչ եղբարք իմ, ‖ մի երդնուցուք՝ մի յերկինս՝ մի յերկիր՝ մի յայլ ինչ երդումն։ այլ եղիցի ձեր՝ այոն, այո. և ոչն, ոչ. զի մի ՚ի կեղծաւորութիւն ինչ անկանիցիք։ (12)

‖ Մատթ. 5. 34.

* Աշխատանայցէ ոք ՚ի ձէնջ, յաղօթս կացցէ։ բերկրիցի ոք, սաղմոս ասասցէ։ (13) * Հիւանդանայցէ ոք ՚ի ձէնջ՝ կոչեսցէ զերիցունս եկեղեցւոյ՝ և արասցեն ՚ի վերայ նորա աղօթս։ օծցեն իւղով յանուն Տն։ (14) * Եւ աղօթքն հաւատովք փրկեսցեն զաշխատեալն՝ և յարուսցէ զնա Տր. և եթէ մեղս ինչ իցէ գործեալ՝ թողցի նմա։ (15)

16 * Խոստովան եղերուք միմեանց զմեղս. և աղօթս արարէք ՚ի վերայ միմեանց՝ որպէս զի բժշկիջիք. քանզի յոյժ զօրաւորք են աղօթք արդարոյ յօգնականութիւն։

զմեղս ձեր

17 * Եղիա մարդ էր իբրև զմեզ չարչարելի. ‖ և յաղօթս եկաց՝ և ոչ տեղեաց յերկիր զերիս ամս և 18 զվեց ամիս։ * Եւ դարձեալ եկաց յաղօթս՝ և ետուն երկինք զանձրև՝ և 19 բուսոյց երկիր զպտուղ իւր։ * ‖ Եղբարք իմ, եթէ ոք ՚ի ձէնջ մոլորեալ իցէ ՚ի ճշմարտութենէ ճանապարհէ ան- 20 տի՝ և դարձուսցէ ոք զնա. * Գիտասցէ, զի որ դարձուսցէ զմեղաւորն ՚ի մոլորութենէ ճանապարհէ իւրմէ, փրկեսցէ զոգի իւր ՚ի մահուանէ՝ և ծածկեսցէ զբազմութիւն մեղաց։

‖ 3 Թագ. 17. 1. Ղուկ. 4. 25. ‖ Գ Թագ. 19. 17. Մատթ. 18. 15. Մատթ. 19. 13. Գ Թագ. 17. 3.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌԱՋՆԵՐՈՐԴ։

Գլուխ Առաջներորդ։

Ք. Օ.

ՊԵՏՐՈՍ ԱՌԱՔԵԼԱԼ Յի Քի, ընտրելոց նժդեհից, որք ՚ի սփիւռս պոնտացւոց, գաղատացւոց, և կապադովկացւոց, և ասիացւոց, և բիւթանացւոց։ (1)
* Ըստ կանխագիտութեան Այ Հօր. սրբութբ Հոգւոյն. ՚ի հնազանդութիւն և ՚ի հեղումն արեանն Յի Քի։ (2) † շնորհք † և խաղաղութիւն բազմասցի։

†Շնոր ձեզ

* ‖ Օրհնեալ է Այ և Հայր Տն մերոյ Յի Քի. որ ըստ բազում ողորմութե իւրում ծնաւ զմեզ վերստին ՚ի յոյսն կենդանի. ՚ի ձեռն յարութեն 4 Յի Քի ՚ի մեռելոց։ (3) * Յանեղծ և յանարատ՝ և յանթառամ ժառանգութիւնն՝ որ պահեալ է յերկինս ձեզ։
5 * Որք զօրութբն Այ պահեալք էք հաւատովք ՚ի պատրաստեալ փրկութիւն, յայտնիլ ՚ի յետին ժամանակս։
6 * Որով ուրախ լինիջիք՝ որք այժմ սակաւիկ ինչ ըստ պատշաճի իրացդ տրտմեալ էք ՚ի պէսպէս փորձութիւնս։
7 * Զի հանդէս ձերոյ հաւատոյն առաւել քան զոսկի կորստական պատուական է. որ հրով փորձեալ գտանի ՚ի գովութիւն և ՚ի փառս. և ՚ի պատիւ 8 յայտնութեան Յի Քի։ * Զոր ոչն տեսէք՝ և սիրեցէք. ընդ որ այժմ ոչ հայեցեալք՝ բայց հաւատացէք. և ուրախ էք անճառ և փառաւորեալ խնդու- 9 թբն։ * Ընկալեալ զկատարումն հաւ

պահէք հաւատով

‖ 2. Կորն. 1. 3. Եփես. 1. 3.

հաւատոցն ձերոց զոգւոցն փրկութիւն։
*Վասն որոյ փրկութեան խնդրեցին, և 10
քննեցին մարգարէքն. որք վասն որոյ
՚ի ձեզ լինելոյ էին շնորհացն՝ մարգա-
րէանային։ *Քննէին՝ յորում և յոր 11
պիսի ժամանակս ցուցանէր ՚ի նոսա Հո
գին Քի։ որ նախ զչարչարանացն Քի
վկայէր՝ և յետ այնորիկ զփառացն։
*Որոց և յայտնեցաւ իսկ. զի ոչ եթէ 12
անձանց, այլ մեզ մատակարարք լի-
նէին նոցին. որք այժմ պատմեցան
այնոքիւք, որք աւետարանեցինն ձեզ
Հոգւովն սրբով, որ առաքիւրն յերկ
նից. զոր ցանկային տեսանել գոնեա
ընդ աղօտ հրեշտակք։

Բ.Ա.

*Վասն որոյ պնդեալ զմէջս մտաց ձերոց, 13
զուարթացեալք բովանդակ սպասե
ցէք հասելոյ ձեզ շնորհացն ՚ի յայտ-
նութեան ՅԻ ՔԻ։ *Իբրև զորդիս 14
հնազանդութեան. մի կերպարանեալք
առաջնովք ձերովք անգիտութեանն
ցանկութեամբք։ *Այլ ըստ սրբոյն՝ որ կո 15
չեաց զձեզ՝ և դուք սուրբք յամենայն
գնացս ձեր լինիջիք։ *Վասն որոյ գրեալ 16
է՝ ‖ եթէ եղերուք սուրբք՝ զի ես սուրբ եմ։
*Եւ եթէ հայր կոչիցէք զայն, որ 17
‖ առանց ակնառութեան դատի ըստ իւրա
քանչիւր գործոց. ապա երկիւղիւ զձե
րոյ պանդխտութեան ժամանակս գնաս
ջիք։ *Զի ոչ ապականացու արծա- 18
թեղինօք՝ և ոսկեղինօք փրկեցայք ՚ի
ձերոց ունայնութեան հայրենաւոր գնա
ցիցն։ *‖ Այլ պատուական արեամբն 19
Քի. իբրև անբիծ և անարատ գա-
ռին։ *Որ յառաջ ծանօթ էր՝ նախ 20
քան զլինելն աշխարհի։ և երևե-
ցաւ ՚ի վախճան ժամանակաց վս ձեր։
*Որք նովաւ հաւատացիք յԱծ՝ որ 21
յարոյց զնա ՚ի մեռելոց. և ետ նմա
փառս. զի հաւատքն ձեր և յոյս իցեն
յԱծ։ *Զանձինս ձեր սրբել հնա- 22
զանդութեամբ ճշմարտութեան, յեղբայր
սիրութեան առանց կեղծաւորութեան, ՚ի
սուրբ սրտէ սիրել սերտիւ զմիմեանս
*Ծնեալք վերստին ոչ յապականու 23
թեան սերմանէն. այլ յանապականա-
ցուէն, կենդանի, և մշտնջենաւոր
բանիւն Այ։ *‖ Քանզի ամ մարմին 24
իբրև զխոտ է. և ամ փառք մարդոյ
իբրև զծաղիկ խոտոյ. խոտն ցամա-
քեցաւ՝ և ծաղիկն թօթափեցաւ։
*Եւ բան Տն մնայ յաւիտենս. այսինքն 25
է բանն, որ ՚ի ձեզ աւետարանեցաւ։

(Margin: մարախէ բարէէն ղայնոսէ, որք — ‖ Ղևտ. 11.44. և 19.2. և 20.7. — ‖ 2. Օրէ. 10.17. Հռոմ. 2.11. Գաղատ. 2.6. — ‖ 1. Կորն. 6.20. և 7.23. Եբրայ. 9.14. 1. Յովհ. 1.7. Յայտ. 1.5. — ‖ Եսայ. 40.6. Սիրաք. 14.18. Յակ. 1.10.)

## ԳԼ։ Բ։

Գ.Ա.

Ի բաց թօթափել ‖ այսուհետև զամ 1
չարութիւն, և զամ նենգութիւն,
և զկեղծաւորութիւն, և զնախանձ, և
2 զամ չարախօսութիւն։ *Իբրև զարդի
ծնեալ մանկունս խօսունս. և անխար
դախ կաթին փափագիցէք. զի նովաւ
3 աճիցէք ՚ի փրկութիւն։ *Եթէ ճաշա
4 կիցէք՝ զի քաղցր է Տր։ *Առ որ մա-
տուցեալ վէմն կենդանի, որ թէպէտ
՚ի մարդկանէ անարգեալ. այլ առ յԱյ
5 ընտրեալ և պատուական է։ *Եւ դուք
իբրև զվէմս կենդանիս շինիք տաճար
հոգևոր. յանարատ քահանայութիւն
մատուցանել զհոգևոր պատարագս՝
հաճոյս Այ, ՚ի ձեռն ՅԻ ՔԻ։
6 *Քանզի կայ իսկ ՚ի գրի. ‖ Թէ ահաւա
սիկ դնեմ ՚ի սիոն վէմ ընտիր, գլուխ
անկեան պատուական, և որ ՚ի նա հաւ
7 ատասցէ՝ մի ամաչեսցէ։ *Ձեզ այ-
սուհետև հաւատացելոց է վէմ պատ-
ուական։ իսկ անհաւատից, ‖ վէմ, ‖
զոր անարգեցին շինօղքն, նա եղև
8 գլուխ անկեան։ *Եւ վէմ գլորման,
և վէմ գայթագղութեան նոցա, որք գայ
թագղին ապստամբեալք ՚ի բանէն՝
9 յոր և եդանն։ *Այլ դուք ազգ էք
ընտիր, թագաւորութիւն, քահանայու
թիւն. ազգ սուրբ, ժողովուրդ սեպհա-
կան. որպէս զի զձեր առաքինութիւս նուէ
րիցէք այնմ, որ զձեզ ՚ի խաւարէն կո
10 չեաց յիւր սքանչելի լոյսն։ *‖ Որք եր-
բեմն չժողովուրդ՝ բայց արդ ժողո-
վուրդ Այ։ որք չողորմեալք՝ այժմ ղո
11 ղորմութիւն գտիք։ *‖ Սիրելիք՝ աղա-
չեմ, իբրև զպանդուխտս, և զնժդեհս,
՚ի բաց մերժել ՚ի մարմնաւոր ցանկու-
թեանց, որք զինուորին ընդդէմ ոգւոյ։
12 *Զվարս ձեր ՚ի մէջ հեթանոսաց
պարկեշտս ցուցանել։ զի որով բամբա
սիցեն զձեզ իբրև զչարագործս՝ ՚ի բար
ւոք գործոց ձերոց դիտեալ՝ փառաւո-
րեսցեն զԱծ յաւուրն այցելութեան։

Գ.Բ.

13 *‖ Հնազանդ լերուք ամ մարդկեղէն
ստեղծուածոյ վասն Տն։ եթէ թա-
գաւորի, իբրև առաւել ումեք։

Գ.Գ.

14 *Եթէ դատաւորաց՝ իբրև ՚ի նմանէ
առաքելոց, ՚ի վրէժխնդրութիւն չարա
գործաց՝ և ՚ի գովութիւն բարեգործաց։
15 *Զի այսպէս են կամք Այ. բարե-
գործացն պապանձեցուցանել զան-
16 զգամ մարդոյ զանգիտութիւն։ *Իբրև
զազատս լինել՝ և մի իբրև զպատրուակ
չարութեան ունել զազատութիւնն. այլ
17 իբրև Այ ծառայք։ *Զամենեսեան
պատուեսջիք. ‖ զեղբայրսիրութիւն սի-
րեցէք. յԱյ երկերուք. զթագաւորս
18 պատուեցէք։ *‖ Ծառայք հնազանդ
լինել յամի երկիւղի տերանց. ոչ մի-
այն բարերարաց և հեզոց, այլ և կա
19 մակորացն։ *Զի այս շնորհք Այ
են։ թէ բարւոք ինչ միոք տանիցի ոք
վշտաց

(Margin: ‖ Հռոմ. 6.4. — Եփես. 4.22. Կողոս. 3.8. Եբրայ. 12.1. — ‖ Եսայ. 28.16. Հռոմ. 9.33. — ‖ Սաղմ. 117.22. Եսայ. 8.14. Մատթ. 21.42. Գործ. 4.11. — ‖ Ովսէ. 2.23. Հռոմ. 9.25. — ‖ Հռոմ. 13.14. Գաղատ. 5.16. — ‖ Հռոմ. 13.1. — ‖ Հռոմ. 12.10. — ‖ Եփես. 6.5. Կողոս. 3.22. Տիտ. 2.9.)

վշտաց անիրաւի։ *Քանզի զի՞նչ ե- 20
րախտիք իցեն, եթէ յորժամ մեղան-
չիցէք՝ տանջիցիք, և համբերիցէք.
այլ թէ բարիս գործիցէք՝ չարչարի-
ցիք՝ և համբերիցէք, այն շնորհք յԱ՟յ
են։ *Քանզի 'ի դոյն իսկ կոչեցայք. 21
զի և Ք՟ս վասն ձեր մեռաւ. և ձեզ
եթող զօրինակ, զի զհետ երթայցէք
զհետոց նր՟ա։ *Որ ոչ արար մեղս, և 22
ոչ գտաւ նենգութի 'ի բերան նորա։
*Որ բամբասեալ՝ և ոչ փոխարէն բամ 23
բասէր։ չարչարեալ՝ և ոչ պահէր սպառ
նալիս։ բայց իրաւամբք մատնիւր դա
տաւորին։ *Որ զմեր մեղս ինքն 24
մարմնովն վերացոյց 'ի խաչափայտն.
զի լիցուք զերծեալք 'ի մեղաց անտի,
և իցեմք արդարութեան կենակիցք.
որոյ վիրօքն բժշկեցայք։ *Քանզի 25
էիք իբրև զոչխարս մոլորեալս։ այլ
այժմ դարձայք առ հովիւն և տեսուչ
ոգւոց ձերոց։

Եսայ. 53. 9. — Եսայ. 53. 4. — 1. Յոհ. 3. 5.

## ԳԼ. Գ.

Գ Գ

Նոյնպէս և կանայք հնազանդ լի- 1
նիլ արանց իւրեանց. զի եթէ
են ոմանք ապստամբք 'ի բանէ անտի,
յաղագս կանանց գնացից՝ առանց բա
նին իսկ շահեսցին։ *Դիտել երկիւ- 2
ղիւ՛ զձեր պարկեշտ գնացս։ *Որոց 3
լինիցի ոչ արտաքուստ հիւսիւք, և ոս
կեհուռ ծամակալօք, կամ պաճու-
ճեալ զգեստուք զարդ։ *Այլ ծա- 4
ծուկ սրտին մարդն. անեղծութբ հե
զութե՛ և հանդարտութե հոգւոյն,
որ է առաջի Ա՟յ բազմապատիկ։
*Քանզի այսպէս երբեմն և կանայք՝ 5
որք յուսացեալք էին յԱ՟ծ՝ զարդա-
րէին զանձինս հնազանդիլ իւրեանց
արանց։ *Որպէս և Սառա՝ զի հնազանդ 6
էր աբրահամու. և տէր իւր կոչէր
զնա։ որոյ եղէք դուք որդիք։ բարե-
գործք էին, և ոչ կասկածէին՝ և ոչ
'ի միոջէ իմիք երկիւղէ։ *Նոյնպէս և 7
արք իմաստութբ բնակիցին ընդ նո՛.
իբրև տկար անօթոյ առնիցեն պա-
տիւ կանանց՝ իբրև ժառանգակցաց
շնորհացն կենաց. զի մի խափան լինի-
ցին աղօթիցն ձերոց։ *Նա՛ գլուխ ամի 8
զի համամիտք իցէք՝ համակարիք, եղ-
բայրասէրք՝ ազնուագութք՝ խոնարհք։
*Մի՛ զչար փոխանակ չարի հատու- 9
ցանել։ կամ բամբասանս ընդ բամ
բասանաց։ այլ զօրին հակառակն՝
օրհնել։ զի յայս իսկ կոչեցայք՝ զի
զօրհնութի ժառանգիցէք։ *Զի որ 10
կամիցի զկեանս սիրել՝ և տեսանել
զաւուրս բարութե, լռեցուսցէ զլե-
զու իւր 'ի չարութէ, և զշրթունս

Եփես. 5. 22. — Կողոս. 3. 18. — 1. Տիմ. 2. 9. — Ծննդ. 18. 12. — Տարեր* — 1. Կորն. 7. 3. — Առակ. 17. 13. — Հռովմ. 12. 17. — 1. Թես. 5. 15. — Գ Ե — Սաղմ. 33. 13.

11 իւր 'ի չխօսելոյ զնենգութի։ *Խո-
տորեսցի 'ի չարէ. և արասցէ զբարի։
խնդրեսցէ զխաղաղութի. և երթիցէ
12 զհետ նր՟ա։ *Զի աչք Տ՟ն 'ի վ՟ր արդա
րոց. և ականջք նորա յաղօթս նոցա։
երեսք Տ՟ն 'ի վերայ չարագործաց։
13 *Եւ ո՞վ իցէ որ չարչարիցէ զձեզ՝ եթէ
դուք բարւոյն նախանձաւորք լինի-
14 ցիք։ *Այլ թէ չարչարիցիք և սյա-
ղագս արդարութե, երանելիք էք։
բայց յերկիւղէ նց՟ մի երկնչիցիք. և մի
15 խռովիցիք։ *Այլ զՏ՟ր զնոյն զՔ՟ս
ս՟ր առնիջիք 'ի սիրտս ձեր։
Պատրաստք իցէք տալ զպատասխա-
նի ամի, որ խնդրիցէ զբանն. որ է
16 վ՟ս յուսոյն ձերոյ։ *Այլ հեզութբ և
երկիւղիւ՛, ունիցիք բարս քաղցունս.
զի որով չարախօսիցեն զձէնջ՝ յամօթ
լիցին՝ որք բամբասեն զձեր բարւոք
17 գնացս 'ի Ք՟ս։ *Զի լաւ է բարեգոր
ծաց (եթէ կամիցին ը Ա՟յ կամացն) (Եբէ կա
18 չարչարիլ՝ քան չարագործացն։ *Զի Ք՟ս
և Ք՟ս միանգամ վ՟ս մեղաց 'ի վերայ Ա՟յ)
ձեր մեռաւ։ արդարն 'ի վ՟ր անարդա
րոց։ զի զձեզ մերձեցուսցէ առ Ա՟ծ։
թեպէտ և մեռաւ մարմնով. այլ կեն
19 դանի է հոգւով։ *Որով և ոգւոցն՝
որք էին 'ի բանտին, երթեալ քարո-
20 զեաց։ *Երբեմն ապստամբելոցն.
յորժամ ներէր նց՟ Ա՟յ երկայնմտու
թեամբ յաւուրս Նոյի. յորս տապանն
կազմիւր։ յոր նուազունք՝ այսինքն՝
ոգիք իբրև ութ ապրեցան 'ի ջրոյ ան
21 տի։ *Որ և զձեզ ըստ նմին օրինակի
կեցուսցէ մկրտութիւնն. ոչ զմարմնոյ
աղտն 'ի բաց ընկենլով՝ այլ զբարւոք
մտացն հանդէս առ Ա՟ծ 'ի ձեռն յա-
22 րութեան Յ՟ի Ք՟ի։ *Որ է ընդ աջմէ
Ա՟յ, երթեալ յերկինս. 'ի հնազան-
դել նմա հրեշտակաց՝ իշխանութեանց
և զօրութեանց։

Եսայ. 1. 16. — Մատ. 5. 10. — Գ Զ — Մեր. 2. 12. — Հռովմ. 5. 6. — Եբրայ. 9. 28. — Ծննդ. 7. 7. — Մատ. 24. 37. — Ղուկ. 17. 26. — Ա՟յ, կլա- նեալ զմահ. զի կենացն յաւիտե- նից ժա- ռանգ- որդք լի- ցուք.

## ԳԼ. Դ.

1 Արդ Ք՟ի չարչարելոյ մարմնով վ՟ս մեր,
և դուք 'ի նոյն միտս վառեցա-
րուք. զի որ չարչարի մարմնով, դա-
2 դարէ 'ի մեղաց։ *Զի մի ևս ըստ
մարդկան ցանկութեանց՝ այլ ըստ կա-
մացն Ա՟յ կեցցէ զայլևս ժամանակն։
3 *Քանզի բաւական է անցեալ ժա-
մանակն լինելոյ կամացն հեթանոսաց.
գնջութբք՝ ցանկութբք՝ գինեհարու
թբք, անառակութբք, արբեցութբք,
4 անօրէն կռապաշտութբք։ *Որով
օտարացեալք ոչ վարին ը ձեզ՝ 'ի նոյն
անկարգութե զեղխութիք, և հայ-
5 հոյեն։ *Որք տայցեն զպատասխանի
այնմ, որ 'ի պատրաստի ունի դատել

Գ Է — Եփես. 4. 23.

զկեն

զկենդանիս և զմեռեալս ։ * Զի 'ի 6
սոյն իսկ և մեռելոց խոստացեալ է ։ զի
դատեսցին ըստ մարդկան մարմնով՝ և
կենդանի լինիցին ըստ Այ հոգւով ։
* Ամենեցուն վախճան մերձեալ է ։ 7
զգաստացարուք այսուհետև՝ և լե-
րուք զուարթունք † ։ * Նախքան զամ, 8
զսէր սերտ ունիլ ընդ միմեանս ։ ‖ զի
սէր ծածկէ զբազմութիւն մեղաց ։
* ‖ Օտարասէրք լինիլ ընդ միմեանս 9
‖ առանց տրտնջելոյ ։ * ‖ Իւրաքանչիւր 10
ոք որպէս և ընկալաւ շնորհս ինչ՝ 'ի
միմեանս զնոյն մատակարարել. ‖ իբրև
զբարւոք հազարապետս պէսպէս շնոր
հացն Այ ։ * Եթէ ոք խօսեսցի՝ իբ 11
րև զԱյ պատգամ. եթէ ոք մատա-
կարարիցէ՝ իբրև 'ի զօրութենէ՝ զոր
շնորհէ Ած ․ զի յամենայնի փառաւորեսցի
Ած 'ի ձեռն Յի Քի ։ որում փառք
և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից ։
Ամէն ։

*Margin:* † 'ի յա- ղօթս. ‖ Առակ. 10. 12. ‖ Հռով. 12. 13. ‖ Եբր. 13. 2. ‖ Փիլիպ. 2. 14. ‖ Հռով. 12. 6. ‖ Ա. Կոր. 4. 2.

Գ․ Կ

* Սիրելիք՝ մի՛ օտարոտի համարել 12
զեռանդն ինչ՝ որ 'ի փորձութիւն ձեզ
լինիցի , իբրև թէ օտար ինչ իրք ձեզ
դիպիցին ։ * Այլ իբրև հաղորդեալք 13
Քի չարչարանացն , ուրախ լինիջիք՝
զի և 'ի յայտնութեան փառացն նորա ցնծա
ցեալք բերկրիջիք ։ * Իսկ եթէ նա- 14
խատիցիք ևս վասն անուանն Քի ,
երանելիք էք ։ զի փառացն՝ և զօրու-
թեան անուն է ։ և Այ Հոգին 'ի վերայ
ձեր հանգուցեալ է ։ * Մի՛ ոք 'ի ձէնջ 15
չարչարեսցի իբրև զսպանող. կամ իբրև
զգող ․ կամ իբրև զչարագործ ․ կամ
իբրև զօտարատեսուչ ։ * Ապա եթէ 16
իբրև զքրիստոնեայ՝ մի՛ ինչ ամաչես-
ցէ ։ այլ փառաւոր արասցէ զԱծ ան-
ուամբս այսուիկ ։ * Զի ժամանակ է՝ 17
սկիզբն լինելոյ դատաստանին 'ի տա-
նէն Այ ։ զի եթէ նախ 'ի մէնջ ․ իսկ
զի՞նչ կատարած այնոցիկ իցէ՝ որք ոչ
հնազանդեցան Այ աւետարանին ։
* ‖ Եւ եթէ արդարն հազիւ կեցցէ ․ 18
իսկ ամբարիշտն և մեղաւորն ո՞ւր
գտանիցի ։ * Ապա՝ զի որք չարչարիցին 19
ըստ Այ կամացն, հաւատարիմ հաստ
չին աւանդեսցեն զիւրեանց ոգիս բա
րերարութեամբ ։

*Margin:* ‖ Առակ. 11. 31.

## Գլ: Ե․

1 Երիցունս այսուհետև աղաչեմ,
իբրև երիցակից՝ և վկայ չար-
չարանացն Քի ․ որ և հանդերձելոց
2 փառացն յայտնելոց հաղորդ ։ * Արա
ծեցէք՝ որ 'ի ձեզ հօտդ է Այ ։ վե-
րակացու լինիլ՝ մի՛ իբրև ակամայ՝ այլ
կամաւ ըստ Այ ։ մի՛ զօշաքաղութեամբ ․
3 այլ յօժարութեամբ ։ * Մի՛ իբրև տիրե-
լով վիճակացն․ այլ լինիլ օրինակ հօ-
4 տին ։ * Զի յերևիլ հովուապետին՝
ընդունիջիք զանթառամ՝ փառացն
5 պսակ ։ * Նոյնպէս և երիտասարդք
հնազանդ լերուք ծերոց ։ * ‖ Ամենե
քին ընդ միմեանս զխոնարհութիւն ու-
նիցիք ։ ‖ զի Ած ամբարտաւանից հա-
կառակ կայ․ տայ շնորհս խոնարհաց ։
6 * ‖ Խոնարհեցարո՛ւք ընդ հզօր ձեռամբն
Այ ․ զի զձեզ բարձրացուսցէ 'ի ժա
7 մանակի ։ * ‖ Զամ հոգս ձեր ընկեցէք
'ի նա․ զի նա՛ է՝ որ հոգայ վասն ձեր ։
8 * Արթո՛ւն լերուք՝ և հսկեցէք ։ զի
ոսոխն ձեր սատանայ իբրև զառիւծ
գոչէ ։ շրջի, և խնդրէ՝ թէ զո՛ կլանի
9 ցէ ։ * Որում 'ի դիմի հարկանիցիք հաս
տատեալք հաւատովք ․ գիտասջիք
զնոյն անցս չարչարանաց եղբայրութեան
ձերոյ , յաշխարհի յանձինս կատարել ։
10 * Եւ Ած ամ շնորհաց՝ որ կոչեաց ըզ-
ձեզ յիւր յաւիտենական փառսն Յի
Քի ․ որում փոքրմի եղէք չարչարա
կիցք ։ նա կազդուրասցուսցէ ․ կարողա
11 ցուսցէ ․ հաստատեսցէ արասցէ ։ * Նմա
իշխանութիւն և փառք յաւիտեանս
յաւիտենից ․ Ամէն ։
12 * 'Ի ձեռն սիղուանոսի հաւատարիմ
եղբօր, որպէս կարծեմ, փոքր 'ի շա-
տէ գրեցի առ ձեզ մխիթարել ։ և 'ի
վերայ այսորիկ վկայել ։ զի և այս
ճշմարիտ շնորհ Աստուծոյ է՝ յոր հաս
տատեալ կայցէք ։
13 * Ողջոյն տայ ձեզ՝ որ 'ի բաբիլոն
ընտրելակից եկեղեցին է ․ և մարկոս
14 որդի իմ ։ * Ողջոյն տաջիք միմեանց
'ի համբոյր սրբութեան ։ Խաղաղութիւն
ընդ ձեզ ամենեսին , որք էք 'ի Քս
Յիսուս ։ Ամէն ։

*Margin:* Գ․Ի․ ‖ Հռով. 12. 10. ‖ Յակ. 4. 6. ‖ Յակ. 4. 10. ‖ Սաղ. 54. 23. Գ․Գ․ Մատ. 6. 25. Ղուկ. 12. 22.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ
## ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԵՐԿՐՈՐԴ:

Գլուխ Առաջներորդ:

Գ.Գ.

1 ԻՄՈՆ ՊԵՏՐՈՍ, ծառայ, եւ առաքեալ Յի Քի. որոց հանդիտապատիւ մեզ հասեալ հաւատոյ յարդարութիւն Այ մերոյ, եւ փրկչին Յի Քի:
2 * Շնորհք ընդ ձեզ, եւ խաղաղութի բազմասցի գիտութբն Այ, եւ Յի Քի Տն մերոյ:
3 * Որպէս ամ ինչ մեզ իւրոյ Ածեղէն զօրութեն առ 'ի կենաս եւ յԱծպաշտութի շնորհեալ. 'ի ձեռն գիտութեամն այնորիկ, որ կոչեաց զմեզ յիւր փառսն եւ վայելչութի:
4 * Որով մեծամեծքն եւ պատուականք աւետիք պարգեւեալք են մեզ: զի նոքիմբք ածեղէն բնութեն լինիցիմք հաղորդակիցք. փախուցեալք 'ի ցանկութեց աշխարհիս եւ յապականութեց:
5 * Եւ սմին այսմիկ զամ փոյթ 'ի մէջ առեալ՝ ձերովք հաւատովքն մատակարարեսջիք զառաքինութի, առաքինութբն զգիտութի:
6 * Եւ գիտութբն զժուժկալութի, եւ ժուժկալութբն զհամբերութի, եւ համբերութբն զածպաշտութի:
7 * Եւ ածպաշտութբն զեղբայրսիրութի, եւ եղբայրսիրութբն զսէր:
8 * Զայսոսիկ ձեր յանձին կալեալ՝ եւ 'ի նոյն յաճախեալ՝ ոչ դատարկս եւ անպտուղս զձեզ հաստատիցեն 'ի Տն մերոյ Յի Քի գիտութին:
9 * Իսկ յոր ոչ իցեն սոքա մերձ, կոյր է եւ զաչացու: 'ի մոռացունս դարձուցեալ զորբութիւն առաջնոց իւրոցն յանցանաց:
10 * Վասն որոյ եղբարք՝ առաւել փութասջիք՝ զի բարեաւն գործովք հաստատուն զձեր կոչումն, եւ զընտրութի պահիցէք: զայս արարեալ՝ ոչ երբէք յանցանիցէք:
11 * Զի այսպէս առատապէս շնորհեսցի ձեզ մուտ 'ի յաւիտենական արքայութի Տն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի:

(Margin: Շնորհեալ էն. — յօնս)

Գ.Ն.

12 * Որով պատրաստեցից միշտ ձեզ յիշեցուցանել վա սոցին առաւել եւս գիտակացն՝ եւ հաստատելոցն եկեալ հասեալ ճշմարտութիւն:
13 * Քանզի իրաւունս համարիմ մինչդեռ եմ 'ի մարմնի աստ՝ զարթուցանել զձեզ յիշատակօք:
14 * Գիտեմ թէ վաղվաղակի է լինելոց մերկանալ յինէն մարմնոյս. որպէս եւ Տր մեր Յս Քս || եցոյց ինձ:
15 * Եւ փութամ ջանալիմ միշտ զձեզ յորդորել: զի եւ յետ իմոյ ելանելոյ յաշխարհէս՝ առնիցէք զյիշատակս այսոցիկ:
16 * || Քանզի ոչ եթէ պաճուճեալ ինչ առասպելաց զհետերթալ ցուցաք ձեզ զՏն մերոյ Յի Քի զզօրութիւնն, եւ զգալուստն: այլ մեզէն եղեալ ականատեսք նրա մեծութեն:
17 * Քանզի առեալ յԱյ Հօրէ զփառս եւ զպատիւ. եկեալ այնպիսւոյ բարբառոյ 'ի մեծ վայելչութե փառաց անտի. || եթէ դա է Որդի իմ սիրելի՝ ընդ որ ես հաճեցայ:
18 * Եւ զայս բարբառ մեք իսկ լուաք եկեալ յերկնից՝ որք ընդ նմա իսկ էաք 'ի սբ լերինն:
19 * Եւ ունիմք հաստատագոյն զբանն մարգարէական. որում եթէ անսայցէք՝ բարւոք առնէք. իբրեւ ճրագի՝ որ տայցէ զլոյս 'ի խաւարչուտ տեղւոջ, մինչեւ տիւն լուսաւորեսցի, եւ արուսեակն ծագեսցի 'ի սիրտս ձեր:

Գ.Օ.

20 * Զայս նախ այսպէս գիտակ լինիջիք. || զի ամ մարգարէութի իւրոյ գրոց լուծումն ոչ լինի:
21 * Քանզի ոչ եթէ ըստ կամաց մարդկան տուաւ մարգարէութի երբէք. այլ 'ի Հոգւոյն սրբոյ կրեալք՝ խօսեցան մարդիկք յԱյ:

(Margin: || Յօհա. 21.19. — || 1. Կորն. 1.17. — || Մատթ. 17. 5. — || 2. Տիմ. 3. 16.)

## Գլ: Բ:

1 Եղեն եւ սուտ մարգարէք 'ի ժողովրդեանն՝ որպէս եւ այժմ 'ի ձեզ լինիցին սուտ վարդապետք. որք սպրդեալ մուծանեն հերձուածս կորստեան: եւ զորս Տրն գնեաց զնա՝ ուրացեալք՝ ածեն 'ի վերայ անձանց զերագահաս կորուստ:
2 * Եւ բազումք անկեալք երթիցեն զհետ նց անառակութեցն: վասն որոյ ճշմարտութեն ճանապարհ հայհոյեսցի:
3 * Եւ ագահու_

(Margin: եւ զորէր որ գնեաց զնոսա)

հութեամբ մոացածին բանիւք առնիցեն զձեզ վաճառանդի․ որոց դատաստանն 'ի բնէ ոչ դատարկանայ․ և կորուստ նց ոչ նիրհեսցէ։ 4 Զի եթէ 'ի հրեշտակսն յանցուցելոց Աստուած ոչ խնայեաց՝ այլ խաւարային կապանօք արկեալ 'ի տարտարոսն՝ ետ պահել 'ի դատաստանն։ 5 Եւ և ոչ 'ի սկզբանն աշխարհի խնայեաց․ բայց զութերորդն զՆոյ՝ զարդարութեան քարոզ պահեաց՝ 'ի ջրհեղեղէ աշխարհի ամբարշտելոցն ածեալ։ 6 Եւ զքաղաքս սոդոմացւոց և գոմորայեցւոց դարձուցեալ յաճիւն՝ դատեցաւ․ օրինակ առ յապայ ամբարշտելոցն կացուցանէր։ 7 Եւ զարդարն զՂովտ ձանձրացեալ յանկարգ գիճութեան գնացից փրկեաց։ 8 Բանզի ականատես և ականջալուր արդարն բնակեալ 'ի մէջ նոցա․ օրըստ օրէ զիւր զսուրբ հոգին նոցա անօրէն գնացիւքն տանջէր։ 9 Գիտէ Տր զածապաշտս փրկել 'ի փորձութենէ․ և զանիրաւս պահել 'ի տանջանս յաւուրն դատաստանի։ 10 Մանաւանդ՝ որք զհետ մարմնոյ պղծալից ցանկութեանց իցեն երթեալք․ արհամարհօղք Տրութեան՝ ժպիրհք՝ յանդգունք․ չզանգիտեն զփառսն հայհոյել։ 11 Ուր հրեշտակք զօրութեամբ և կարողութեամբ քան զնս մեծամեծք՝ չածեն զնոքօք զհայհոյութեան դատաստան։ 12 Այլ սոքա իբրև զանխօս անասունս՝ ըստ բնածին բարուցն յեղծումն և յապականութին որոց չեն տեղեակ, հայհոյեն յապականութեան իւրեանց՝ և ապականեսցին։ 13 Տանջեալք 'ի վարձուց անիրաւութեան․ որք զցանկութին զաւուրն փափկութին համարին․ բծկանք՝ արատաւորք՝ փափկացեալք 'ի պատիրս իւրեանց․ լեալ ձեզ խրախճանակիցք։ 14 Աչս ունին հանգոյնս պոռնկաց․ անդադարս 'ի մեղաց՝ պատրել զանձինս յողդողդաց․ որք ունին զսիրտ հարեալ զագահութեամբ․ մանկունք անիծից։ 15 Թողեալ զուղղորդ ճանապարհն՝ մոլորեցան․ զհետ երթեալ ճանապարհին Բաղաամայ Բէօրեանց՝ զվարձս անիրաւութեան սիրեցին։ 16 Որ կշտամբանս իւրոյ անօրէնութեանն ստացաւ զէշն անխօսուն․ մարդկեղէն բարբառովն բարբառեալ արգել զմարգարէին զանօրէնութիւնն։ 17 Այսոքիկ են աղբիւրք անջրդիք՝ և մէգք վարեալք 'ի մրրկէ․ որոց աղջամուղջք խաւարին յաւիտեան պահեալ կան։ 18 Բանզի զմեծաբանս սնոտեաց բարբառեալ՝ պատրեն գիճութեամբք ցանկութեան մարմնոյ զայնոսիկ՝ որք սակաւիկ փախչիցին յայնցանէ՝ որք 'ի մոլորութեան շրջիցին։ 19 Նոցա զազատութի խոստանան, և ինքեանք ապականութեան ծառայք են․ զի որով իմիք յաղթիցի ոք, նորին և ծառայ է։ 20 Զի եթէ փախուցեալք 'ի պղծութեանց աշխարհի գիտութեամբ Տն մերոյ, և փրկչին Յի Քի․ և դարձեալ ընդ նոյնս շաղեալք պատիցին՝ եղև նոցա վախճանն չար քան զառաջինն։ 21 Զի լաւ էր նոցա՝ եթէ բնաւ իսկ չէր ծանուցեալ զարդարութեան ճանապարհ․ քան թէ ծանեան՝ և յետս կացին 'ի սուրբ պատուիրանէն՝ որ նց աւանդեցաւ։ 22 Եկեալ 'ի դէպ նոցա ճշմարիտ առակին զգօնութեան, եթէ շուն դառնայ անդրէն 'ի փսխած իւր․ և խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ։

## Գլ։ Գ։

1 Զայս ձեզ սիրելիք երկրորդ թուղթ գրեմ․ որովք զարթուցից 'ի յիշատակ զհաստատուն միտս ձեր։ 2 Յիշել զյառաջագոյն ասացեալ պատգամսն 'ի սրբոց մարգարէից և յառաքելոցն ձերոց․ զպատուէրս Տն և փրկչին։ 3 Բայց զայս նախ գիտասջիք՝ զի յաւուրս յետինս եկեսցեն արհամարհօղք՝ այպանօղք․ որք ըստ իւրեանց ցանկութեանց գնասցեն։ 4 Եւ ասիցեն․ ուր են աւետիք գալստեան նր․ զի յորմէ հետէ հարքն ննջեցին՝ ամ ինչ նոյնպէս կայ մնայ 'ի սկզբանէ արարածոց։ 5 Եւ զայն մոռացեալ իցէ նոցա՝ որք զայսն կամին․ եթէ երկինք էին 'ի սկզբանէ՝ և երկիր 'ի ջրոց․ և ջուրք հաստատեալ բանիւն Այ։ 6 Որով երբեմն աշխարհ ջրհեղեղաւ ապականեալ կորեաւ։ 7 Եւ այժմ երկինք և երկիր նովին բանիւ գանձեալ են․ հրոյ պահեալք յօրն դատաստանի՝ և կորստեան ամբարիշտ մարդկան։ 8 Եւ այս ևս մի լիցի 'ի ձէնջ ծածկեալ՝ սիրելիք․ զի մի օր Տն իբրև զհազար ամ է․ և հազար ամ իբրև զմի օր։ 9 Ոչ յամեցուսցէ Տր զաւետիսն՝ որպէս ոմանք յամր համարին․ այլ երկայնամիտ լինի առ ձեզ․ քանզի ոչ կամի եթէ ոք կորիցէ․ այլ ամենեցուն հասանել յապաշխարութի։ 10 Այլ եկեսցէ օր Տն իբրև գող․ յորում երկինք տագնապաւ անցցեն․ և բնութիւնք հրով կիզեալք լուծցին․ և երկիր՝ և որք 'ի նմա գործք գտանիցին։ 11 Եւ 'ի լուծանիլ այսպէս այսր ամի, որպիսի ինչ պարտ իցէ ձեզ գտա

նել․ այլ սուրբ և աստուածպաշտ կար-
գաւ ակնունել։ * Եւ փութալ հասա- 12
նել գալստեան աւուրն Տ՟ն․ յորում
երկինք հրայրեացք լուծանիցեն, և
բնութիւնք հրդեհեալք հալիցեն։
* Նորոց երկնից՝ և նորոյ երկրի ըստ 13
աւետեացն հայեցեալ սպասիցեմք,
յորս արդարութիւն բնակէ։
* Վասն որոյ սիրելիք՝ այսոցիկ սպա- 14
սեալք՝ փոյթ անձին ունիջիք՝ ամբիծք
և անարատք գտանիլ նմա ՚ի խաղաղու-
թեան։ * Եւ զՏ՟ն երկայնմտութիւն՝ 15
փրկութիւն համարիջիք։ զորօրինակ և
սիրելի եղբայրն մեր պօղոս՝ ըստ շնոր-
հելոյ նմա իմաստութեան գրեաց ձեզ։
16 * Որպէս և յա̄մ՟ իսկ թուղթսն խօսի
վասն այսոցիկ․ յորս գտանին ոչինչ
դժուարիմացք․ զորս անուսքն և յողդ-
յողդք կամակորեն․ որպէս և զա̄մ՟
իսկ գիրս առ իւրեանց անձանցն կո-
17 րուստ։ * Եւ դուք այսուհետև սի-
րելիք՝ իբրև զկանխագէտս զգուշա-
ցիք․ զի մի՛ անառակ մոլորութեամբն
զգածեալք՝ անկանիջիք յաստատուց հաս-
18 տատութենէ։ * Աճեցէք շնորհօք և
գիտութեամբ Տ՟ն մերոյ և փրկչին Յ՟ի
Ք՟ի։ նմա փառք՝ և այժմ, և յօրն
յաւիտենից․ Ամէն։

Եսայ․ 65․ 17․ և 66․22 Յայտ․ 21․ 1․ — Ե Դ — Հռով․ 2․ 4․

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՅՈՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԱՌԱՋՆՈՐԴ։

Գլուխ Առաջներորդ։

1 ՈՐ ԷՐՆ ՚Ի ՍԿԶԲԱՆՆ․ զորմէ լուաքն՝ որ ումականատեսն իսկ եղեաք։ ընդ որ հայեցաքն, և ձեռք մեր շօշա-փեցին ՚ի վ՟ր բա-նին կենաց։ 2 * Եւ կեանքն յայտնեցան․ և տեսաք՝ և վկայեմք՝ և պատմեմք ձեզ զյաւիտենական կենացն, որ էր առ հօր՝ և երևեցաւ մեզ։ 3 * Զոր տեսաքն՝ և լուաք՝ պատմեմք և ձեզ․ զի և դուք զհաղորդութիւն ունիցիք ընդ մեզ․ և մեր հաղորդութիւն իցէ ընդ հօր՝ և ընդ Որդւոյ իւրում Յ՟ի Ք՟ի։ 4 * Եւ զայս գրեմք ձեզ․ զի ձեր ուրախութիւն կատարեալ լիցի։ 5 * Եւ այս են աւետիքն, զոր լուաք առ ՚ի նմանէ՝ և պատմեմք ձեզ․ զի Ա՟ծ լոյս է՝ և խաւար ՚ի նմա չիք և ոչ մի։ 6 * Եթէ ասիցեմք՝ եթէ զհաղորդութիւն ունիմք ընդ նմա, և ՚ի խաւարի շրջիցիմք՝ ստեմք՝, և ոչ առնեմք զճշմարտութիւնն։ 7 * Իսկ եթէ ընդ լոյս գնայցեմք՝ որպէս և նա ՚ի լոյս է․ զհաղորդութիւն ունիմք ընդ միմեանս․ և արիւնն Յ՟ի Որդւոյ նո՟ր սրբէ զմեզ յա̄մ՟ մեղաց։ 8 * Եթէ ասիցեմք, եթէ մեղս ինչ մեք ոչ ունիմք՝ զանձինս խաբեմք․ և ճշմարտութիւն ՚ի մեզ ոչ գոյ։ 9 * Ապա եթէ խոստովան լինիցիմք զմեղս մեր՝ հաւատարիմ է նա՝ և արդար առ ՚ի թողուլ մեզ զմեղս մեր․ և սրբել զմեզ յա̄մ՟ անիրաւութենէ։ 10 * Եւ եթէ ասիցեմք, եթէ ոչինչ մեղաք՝ սուտ առնեմք զնա․ և բանն նորա ոչ է ՚ի մեզ բնակեալ։

Յոհան․ 8․ 12․ — Եբրա․ 9․ 14․ 1․ Պետ․ 1․ 19․ Յայտ․ 1․ 5․ 3 Թագ․ 8․ 46․ 2․ Մնաց․ 6․ 36․ Առակ․ 20․ 9․ Ժողով․ 7․ 21․

Գլ․ Բ․

1 Որդեակք իմ, զայս գրեմ ձեզ՝ զի մի՛ մեղիցէք․ և եթէ մեղիցէ ոք, ունիմք բարեխօս առ Ա՟ծ զՅ՟ս Ք՟ս՝ 2 զարդարն՝ և զանարատն։ * Եւ նա է քաւութիւն մեղաց մերոց․ և ոչ եթէ մերոցն միայն՝ այլ և ա̄մ՟ աշխարհի։ 3 * Եւ յայսմիկ գիտեմք՝ եթէ ծանեաք զնա․ եթէ զպատուիրանս նորա պա-

հէ-

հիցեմք։ 4 *Որ ասիցէ, եթէ ծանեայ զնա. և զպատուիրանս նր ոչ պահիցէ՝ սուտ է, և ճշմարտութի ՚ի նմա ոչ գոյ։ 5 *Իսկ որ պահիցէ զբանս նր՝ արդարև ՚ի նմա է կատարեալ սէրն Այ։ այսուիկ ճանաչեմք՝ եթէ ՚ի նմա եմք։ 6 *Որ ասիցէ ՚ի նմա բնակիլ՝ այնպէս պարտի գնալ, որպէս և նայն գնաց։

Ե Լ

7 *Սիրելիք՝ ոչ եթէ զնոր ինչ պատուիրան գրեմ ձեզ՝ այլ զհին պատուիրանն, զոր ՚ի սկզբանէ ունէիք. և հին պատուիրան բանն է՝ զոր լուայք։

‖Յոհան. 13. 34. և 15.12

8 *‖Դարձեալ զնոր պատուիրան գրեմ ձեզ՝ որ է ճշմարտին ՚ի նմա՝ և ՚ի ձեզ։ զի խաւարն էանց. և լոյսն ճշմարիտ արդէն իսկ երևի։ 9 *Որ ասէ եթէ ՚ի լոյսն իցէ՝ և զեղբայր իւր ատիցէ՝ սուտ է՝ և ՚ի խաւարի է տակաւին։

‖Մյր. 3. 14.

10 *‖Որ սիրէ զեղբայր իւր, ՚ի լոյս բնակի, և գայթագղութի ՚ի նմա չիք։ 11 *Իսկ որ ատեայ զեղբայր իւր՝ ՚ի խաւարի է. և ընդ խաւարի շրջի. և ոչ գիտէ յո երթայ՝ զի խաւարն կուրացոյց զաչս նորա։ 12 *Գրեմ ձեզ որդեակք՝ զի թողեալ են ձեզ մեղք վն անուան նր։ 13 *Գրեմ ձեզ հարք՝ զի ծանեայք դուք զայն՝ որ ՚ի սկզբանէն է։ գրեմ ձեզ երիտասարդք. զի յաղթեցիք դուք չարին։ 14 *Գրեմ ձեզ մանկունք՝ զի ծանեայք դուք զհայր։ գրեցի ձեզ հարք. զի ծանեայք դուք զայն. որ ՚ի սկզբանէն է։ գրեցի ձեզ երիտասարդք՝ զի էք դուք հզօրացեալք՝ և բանն Այ ՚ի ձեզ բնակի, և յաղթեցիք դուք չարին։

գրեմ

15 *Մի՛ սիրէք զաշխարհ՝ և մի՛ որ ինչ յաշխարհի է։ 16 *Եթէ ոք սիրէ զաշխարհ՝ ոչ է ՚ի նմա սէր Հօր։ զի ամենայն որ ինչ յաշխարհի է՝ ցանկութի է մարմնոյ. և ցանկութի է աչաց. և ամբարտաւանութի աստի կենացս. որ ոչ է առ ՚ի Հօրէ՝ այլ յաշխարհէ աստի է։ 17 *Աշխարհս անցանէ և ցանկութիւն. իսկ որ առնէ զկամս Այ՝ մնայ յաւիտեան։

Օ Կ

18 *Որդեակք, յետին ժամանակ է. և որպէս լուայք եթէ նեռն գալոց է՝ և արդէն իսկ նեռինք բազումք եկեալք են։ որով մարթիմք իմանալ՝ եթէ յետին ժամանակ է։ 19 *Ա՛ռ ՚ի մէնջ ելին, այլ ոչ էին ՚ի մէնջ. զի եթէ ՚ի մէնջ էին՝ ապա առ մեզ մնային։ այլ զի յայտնի լինիցին, եթէ ոչ էին ամենեքին ՚ի մէնջ։

Օ Ր

և գիտէք զամենայն

20 *Եւ դուք զօծութի ունիք առ ՚ի սրբոյն. և գիտէք ամենեքին։ 21 *Ոչ գրեցի ձեզ՝ եթէ ոչ գիտէք զճշմարտութիւն. այլ թէ գիտէք զնա. և թէ՝ զի ամ ստութի ոչ է ՚ի ճշմարտութէ անտի։ 22 *Իսկ ո՞վ է սուտ՝ եթէ ոչ՝ որ ուրանայ թէ Յս չէ Քս։ նա իսկ է նեռն. որ ուրանայ զՀայր և զՈրդի։ 23 *Ամենայն որ ուրանայ զՈրդի, և ոչ զՀայր ընդունի։ իսկ որ խոստովանի զՈրդի, և զՀայր ընդունի։ 24 *Դուք՝ զոր լուայքն ՚ի սկզբանէ՝ ՚ի ձեզ բնակեսցի. զի եթէ ՚ի ձեզ բնակեսցի, զոր ՚ի սկզբանէն լուայք՝ և դուք յՈրդի և ՚ի Հայր բնակեսջիք։ 25 *Եւ այս են աւետիքն՝ զորս աւետարանեաց նա մեզ՝ զկեանսն յաւիտենականս։ 26 *Զայս գրեցի ձեզ, զի մի՛ ոք զձեզ մոլորեցուցանիցէ։ 27 *Եւ դուք օծութիւն՝ զոր ընկալայք ՚ի նմանէ՝ բնակեսցի ՚ի ձեզ. զի չէ՛ ինչ պիտոյ՝ թէ ոք զձեզ ուսուսցէ։ այլ որպէս նորա օծութիւն ուսուցանիցէ զձեզ վն ամի՝ և ճշմարիտ է՝ և չէ՛ սուտ. և որպէս ուսոյցն զձեզ, կայք ՚ի նմա։ 28 *Եւ այժմ որդեակք՝ կացէք ՚ի նմին. զի եթէ յայտնեսցի, ունիցիմք համարձակութի. և մի՛ ամաչեսցուք ՚ի նմանէ ՚ի գալստեանն նորա։ 29 *Զի եթէ գիտիցէք՝ եթէ արդար է նա՝, իմասջիք, եթէ ամենայն, որ առնէ զարդարութի՝ առ ՚ի նմանէ ծնեալ է։

կացէք

## ԳԼ: Գ.

1 Տեսէք՝ զո՛րպիսի սէր շնորհեաց մեզ Հայր. զի որդիք Այ կոչիցուք և եմք։ վն այսորիկ աշխարհ ոչ ճանաչէ զմեզ՝ քանզի ոչ ծանեաւ զնա։

և եղեմք.

2 *Սիրելիք՝ այժմ որդիք Այ եմք. և չև ևս է յայտ՝ եթէ զինչ լինելոց իցեմք։ գիտեմք, զի յորժամ նա յայտնեսցի՝ նման նմա լինելոց եմք. զի տեսանելոց եմք զնա՝ որպէս և էն։ 3 *Եւ ամ, որ ունի զայս յոյս յանձին՝ սրբէ զանձն իւր՝ որպէս և նա սուրբ է։ 4 *Ամենայն, որ զմեղս գործէ, նա և զանօրէնութիս առնէ՝ և ինքն իսկ մեղքն անօրէնութիւն է։ 5 *Եւ գիտեմք՝ զի նա յայտնեցաւ՝ զի զմեղս բարձցէ՝ 6 և ‖՚ի նմա մեղք ոչ են։ *Ամենայն, որ ՚ի նմա է հաստատեալ՝ ոչ մեղանչէ. և ամ, որ մեղանչէ՝ ոչ ետես զնա՝ և ոչ ծանեաւ զնա։

Օ Գ

‖Եսայ. 53.9. 1.Պետ. 2.22.

7 *Մանկունք՝ մի՛ ոք զձեզ խաբեսցէ։ որ առնէ զարդարութի, արդար է՝ որպէս և 8 նայն արդար է։ *‖Եւ որ առնէ զմեղս, ՚ի սատանայէ է։ զի ՚ի սկզբանէ սատանայ մեղանչէ։ վն այնորիկ յայտնեցաւ Որդին Այ՝ զի լուծցէ զգործս սատանայի։ 9 *Ամենայն որ յԱյ է ծնեալ՝ մեղս ոչ առնէ. զի սերմն նորա ՚ի նմա մնայ, և ոչ կարէ մեղանչել. զի յԱյ է ծնեալ։ 10 *Այսուիկ յայտնի են ՚ի

Օ Գ

‖Յոհան. 8. 44.

մի-

միմեանց որդիք Ա՟յ՝ և որդիք սատանայի։ Ամ՟ որ ոչ առնէ զարդարութի՛ չէ նա յԱ՟յ, և որ ոչ սիրէ զեղբայր իւր։ 11 * Զի այս է պատուիրանն՝ զոր լուայք ՚ի սկզբանէ՝ ‖ զի սիրեսջիք զմիմեանս։ 12 * Ոչ որպէս ‖ կայէն ՚ի չարէ անտի էր՝ և սպան զեղբայր իւր։ և յո՞ր սակս սպան զնա. զի իւր գործքն չարք էին, և եղբօրն բարիք։ 13 * Եւ մի ինչ զարմանայք եղբարք, եթէ աշխարհ զձեզ ատեայ։ 14 * Մեք գիտեմք՝ զի փոխեցաք ՚ի մահուանէ ՚ի կեանս. քանզի սիրեմք զեղբարս։ ‖ Իսկ որ ոչն սիրէ՝ անդէն ՚ի մահու մնայ։ 15 * Ա՟մ, որ ատէ զեղբայր իւր՝ մարդասպան է։ և գիտէք՝ զի ամենայն մարդասպան ոչ ունի զկեանսն յաւիտենականս յանձին հաստատեալ։ 16 * ‖ Ի յայսմիկ գիտացաք զսէրն Ա՟յ. զի նա զանձն իւր եդ վասն մեր. և մեք վ՟ն եղբարց մերոց պարտիմք դնել զանձինս։ 17 * ‖ Որ ունիցի զկեանս ինչ յաշխարհիս՝ և տեսանիցէ զեղբայր իւր կարօտեալ ինչ՝ և փակիցէ զգութ իւր ՚ի նմանէ. զիա՞րդ սէրն Ա՟յ ՚ի նմա իցէ բնակեալ։ 18 * Որդեակք՝ մի բանիւք և լեզուօք սիրեսցուք. այլ արդեամբ և ճշմարտութբ. 19 * Եւ այսուիկ լիցուք ծանուցեալք՝ եթէ ՚ի ճշմարտութէ անտի իցեմք։ և առաջի նորա արասցուք զհանդէս սրտից մերոց։ 20 * Զի եթէ ստգտանիցեն զմեզ սիրտք մեր՝ այլ Ա՟ծ մեծ է քան զսիրտս մեր՝ և գիտէ զամենայն։

21 * Սիրելիք՝ եթէ սիրտք մեր զմեզ ոչ ստգտանիցեն, զհամարձակութի ունիմք առ Ա՟ծ։ 22 * ‖ Եւ զորինչ հայցիցեմք, առնուցումք ՚ի նմանէ. զի զպատուիրանս նորա պահեմք. և զհաճոյս առաջի նորա առնեմք։ 23 * ‖ Եւ այս է պատուիրան նորա՝ զի հաւատասցուք յանուն Որդւոյ նր՟ Յ՟ի Ք՟ի։ ‖ և սիրեսցուք զմիմեանս՝ որպէս և ետ մեզ պատուէր։ 24 * Եւ որ պահէ զպատուիրանս նորա՝ ՚ի նմա է հաստատեալ՝ և նա ՚ի սմա։ և յայսմանէ գիտեմք՝ եթէ բնակի ՚ի մեզ ՚ի հոգւոյ անտի, զոր ետ մեզ։

## ԳԼ: Դ։

1 Սիրելիք՝ մի ամ՟ հոգւոյ հաւատայք, այլ ընտրեցէք զհոգիսն՝ եթէ յԱ՟յ իցեն։ զի բազում սուտ մարգարէք ելեալք են յաշխարհ։ 2 * Եւ մեք այսուիկ ճանաչեմք զհոգին Ա՟յ։ Ա՟մ հոգի, որ խոստովանի զՅ՟ս Ք՟ս մարմնով եկեալ՝ յԱ՟յ է նա։ 3 * Եւ ամ՟ հոգի, որ ոչ խոստովանի զՅ՟ս մարմնով եկեալ՝ չէ նա յԱ՟յ։ և այս նեռին է. զորմէ լուայք եթէ գալոց է, և արդէն իսկ յաշխարհի է։

4 * Դուք յԱ՟յ էք որդեակք՝ և յաղթեցէք նց. զի մեծ է՝ որ ՚ի ձեզ է՝ քան զայն որ յաշխարհին է։ 5 * ‖ Նոքա յաշխարհէ են. վ՟ն այնորիկ յաշխարհէ խօսին. և աշխարհ լսէ նոցա։ 6 * Մեք յԱ՟յ եմք։ որ զԱ՟ծ ճանաչէ, լսէ մեզ։ և որ չէ յԱ՟յ՝ ոչ լսէ մեզ։ այսուիկ ճանաչեմք զհոգին ճշմարտութե և զհոգին խաբէութե։

7 * Սիրելիք՝ սիրեսցուք զմիմեանս։ զի սէր յԱ՟յ է։ և ամ՟ որ սիրէ՝ յԱ՟յ է ծնեալ՝ և ճանաչէ զԱ՟ծ։ 8 * Եւ որ ոչն սիրէ՝ ոչ ճանաչէ զԱ՟ծ, զի Ա՟ծ սէր է։ 9 * ‖ Եւ զի յայսմ երևեցաւ սէրն Ա՟յ ՚ի մեզ՝ զի զՈրդին իւր միածին առաքեաց յաշխարհ, զի եղիցուք նովաւ կենդանիք։ 10 * Յայսմ է սէրն. ոչ զի մեք սիրեցաք զԱ՟ծ՝ այլ զի նա սիրեաց զմեզ։ և առաքեաց զՈրդին իւր ՚ի քաւութի մեղաց մերոց։ 11 * Սիրելիք՝ եթէ Ա՟ծ այնպէս սիրեաց զմեզ. ապա և մեք պարտիմք զմիմեանս սիրել։ 12 * ‖ Զա՟ծ ուրուք երբէք չէք տեսեալ։ եթէ սիրեսցուք զմիմեանս՝ Ա՟ծ ՚ի մեզ բնակի. և սէր նր ՚ի մեզ կատարեալ է։ 13 * Ի յայսմիկ գիտեմք, եթէ մեք ՚ի նմա բնակեալ եմք՝ և նա ՚ի մեզ՝ զի ՚ի հոգւոյն իւրմէ ետ մեզ։ 14 * Եւ մեք տեսաք՝ և վկայեմք, զի հայր առաքեաց զՈրդին իւր փրկիչ աշխարհի։ 15 * Որ ոք խոստովանեսցի եթէ Յ՟ս է Որդի Ա՟յ, Ա՟ծ ՚ի նմա բնակի, և նա յԱ՟ծ։ 16 * Եւ մեք հաւատացաք՝ և ծանեաք զսէրն Ա՟յ, զոր ունի առ մեզ։ Ա՟ծ սէր է. և որ կայ ՚ի սէրն՝ բնակեալ է յԱ՟ծ. և Ա՟ծ ՚ի նմա բնակի։ 17 * Յայսմիկ կատարեալ է սէր նր ՚ի մեզ. զի զհամարձակութի ունիցիմք յաւուրն դատաստանի։ զի որպ՟ նայն է՝ նոյնպէս և մեք եմք յաշխարհի յայսմիկ։ 18 * Երկիւղ ոչ գոյ ՚ի սէր, այլ սէրն կատարեալ ՚ի բաց մերժէ զերկիւղ։ զի երկիւղն տանջանօք է։ իսկ որ երկնչի, չէ կատարեալ ՚ի սէրն։ 19 * Մեք սիրեսցուք զԱ՟ծ՝ վ՟ն զի նախ նա սիրեաց զմեզ։ 20 * Եթէ ոք ասիցէ եթէ սիրեմ զԱ՟ծ, և զեղբայր իւր ատիցէ՝ սուտ է։ որ ոչ սիրէ զեղբայր իւր՝ զոր տեսանէ. զԱ՟ծ, զոր ոչն տեսեալ՝ զիա՞րդ կարիցէ սիրել։ 21 * ‖ Եւ զայս պատուէր ունիմք առ ՚ի նմանէ. զի որ սիրէ զԱ՟ծ, սիրէ նա և զեղբայր իւր։

## ԳԼ: Ե։

1 Ամենայն որ հաւատայ՝ եթէ Յ՟ս է Ք՟ս, յԱ՟յ ծնեալ է։ և ամ՟ որ սիրէ

սիրէ զծնօղն, սիրէ և զծնեալն 'ի նմա նէ: * Այսուիկ ճանաչեմք՝ եթէ սի_րեմք զՈրդիսն Այ: յորժամ զԱծ սի_րեսցուք՝ և զպատուիրանս նր արաս_ցուք: * Քանզի այս է սէրն Այ, եթէ զպատուիրանս նր պահեսցուք. և պատ ուիրանք նր չեն ինչ ծանունք: * Զի ամ, որ յԱյ ծնեալ է՝ յաղթէ աշխար հի: և այս է յաղթութիւն՝ որ յաղթէ աշխարհի՝ հաւատքն մեր: * Եւ ո՞ իցէ, որ յաղթիցէ աշխարհի. եթէ ոչ՝ որ հաւատայցէ՝ եթէ Յս է Որդի Այ: * Սա է՝ որ եկն ջրով (և հոգւով) և արեամբ, Յս Քս: ոչ ջրով միայն. այլ և արեամբ և ջրով: և Հոգին է՝ որ վկայէ, եթէ Քս է ճշմարտութիւն: * Զի երեք են, որք վկայեն յերկինս: Հայր, Բանն, և Հոգին սբ. և երեքինս մի են: * Եւ երեք են, որք վկայեն յերկ րի: Հոգի, ջուր, և արիւն. և երե_քինն մի են: * Եթէ զմարդկան ինչ վկայութի ընդունիցիմք՝ ապաքէն Այ վկայութիւն մեծ իցէ: Այս է վկայու թիւն Այ. զի վկայեաց 'ի վր Որդւոյն իւրոյ: * Որ հաւատայ յՈրդին Այ, ունի յանձին զվկայութիւս զայս: որ ոչ հաւատայ Որդւոյ Այ, սուտ առ_նէ զնա: քանզի ոչ հաւատաց վկայու թեան, զոր վկայեաց Ած 'ի վր Որդւոյ իւրոյ: * Եւ այս ինչ է վկայութիւն. զի զկեանս յաւիտենականս ետ մեզ Ած: և այս են կեանք՝ որ յՈրդին նր են: * Որ ընդունի զՈրդի, ընդունի և զկեանս: և որ ոչ ընդունի զՈրդին Այ, և ո՛չ զկեանս ընդունի:

Ա. Կոր. 15. 57.

Յոհ. 3. 36.

* Զայս գրեցի ձեզ՝ զի գիտասջիք՝ թէ կեանս յաւիտենականս ունիք. և զի հաւատայցէք յանուն Որդւոյն Այ: * Եւ այս է համարձակութիւն՝ զոր ու նիմք մեք առ նա: զի զորինչ հայցեսցուք ըստ կամաց նր, լսէ մեզ: * Զի եթէ գիտեմք՝ եթէ լսէ հայցուածոյն մե_րոյ. ապա գիտեմք՝ եթէ առնումք ըզ հայցուածսն՝ զոր հայցեմք առ 'ի նմա_նէ: * Եթէ ոք տեսցէ զեղբայր իւր մեղուցեալ մեղս, որ ո՛չ առ 'ի մահ. խնդրեսցէ՝ և տացի նմա կեանս, մեղու ցելոյն ո՛չ առ 'ի մահ: են մեղք՝ որք մա հու չափք են. ո՛չ վն այնորիկ ասեմ, եթէ խնդրեսցես: * Ամ անիրաւութի մեղք են. և են մեղք՝ որք մահու չափք են: * Գիտեմք եթէ ամ, որ յԱյ է ծնեալ՝ ո՛չ մեղանչէ: այլ որ յԱյն է ծնեալ՝ պահէ զանձն. և չար առ նա ո՛չ մերձե նայ: * Գիտեմք եթէ յԱյ եմք, և աշխարհ ամ 'ի չարի կայ: * Եւ գի_տեմք՝ եթէ Որդին Այ եկն, ‖ և ետ մեզ միտս. զի ծանիցուք զճշմարիտն Ած: և իցեմք 'ի ճշմարտի Որդւոյ նր Յս Քս. զի նա է ճշմարիտ Ած՝ և կեանք յաւիտենականք: * Որդեակք, պահե ցէք զանձինս 'ի կռապաշտութենէ:

և այս կեանս յորդւոյ նորա են:

Ի. Բ.

որք հաւատայք յանուն որդւոյն այ

‖ Ղուկ. 24. 45.

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՅՈՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ
### ԵՐԿՐՈՐԴ.

Ի. Փ.

ԵՐԻՑՈՒՆ ԱՌ ընտրեալդ կիւրիա. և առ որդեակս իւր. զոր ես սիրեմ ճշմար_տութբ: և ո՛չ եթէ ես միայն. այլ և ամենե_քեան, ոյք գիտակք են ճշմարտուեն: * Վն ճշմարտութեն, որ 'ի մեզ հաս_տատեալ է. զի և ընդ ձեզ իցէ. և դուք յաւիտենից ընդ մեզ իցէք: * Շնորհք՝ ողորմութի, խաղաղու թի յԱյ Հօրէ. և 'ի Տե Յե Քէ Որդւոյն Հօրն՝ ճշմարտութբ և սի_րով եղիցին ընդ ձեզ: * Ուրախ եղէ յոյժ. զի գտի յորդեկացդ քոյ՝ որք գնան ճշմարտութբ, ըստ պատուիրա նին զոր առաք 'ի Հօրէ: * Եւ այժմ աղաչեմ զքեզ կիւրիա. իբրև ո՛չ ե_թէ զնոր ինչ պատուիրան գրեմ քեզ. այլ զոր 'ի սկզբանէ ունէաք, ‖ զի սի_րեսցուք զմիմեանս: * Եւ այս է սէրն, զի գնասցուք ըստ պատուիրանաց նր: և այս է պատուիրանն, զի որպ լուայք 'ի սկզբանէ՝ ըստ նմին գնասջիք: * Զի բազում մոլորեցուցիչք ելին յաշխարհ: որոց ոչ խոստովանին զՅս Քս եկեալ մարմնով, նա մոլորեցու ցիչ է, և նեռն: * Զգոյշ լինիջիք անձանց՝ զի մի կորուսանիցէք՝ զոր վաստակեցէքն. այլ զի առնուցուք բովանդակ զվարձս: * Ամ, որ յանցանէ՝ և ոչ կայ 'ի վարդա պետութեն Քի, զԱծ ո՛չ ճանաչէ: որ կայ 'ի վարդապետութեն, նա՝ և զՈրդի

'ի յաւէ_ տեան

‖ Յոհ. 13. 34. և 15. 12

Ի. Գ.

զՈրդի և զՀայր ընդունի։ * Եթէ 10 ոք գայցէ առ ձեզ, և զվարդապետութիւս զայս ոչ ունիցի, մի ընդունիցիք զնա 'ի տուն. և մի ողջոյն տայցէք նմա։ * Զի որ ասասցէ նմա ողջոյն՝ 11 կցորդ լինիցի չարեաց գործոց նորա։ * Բազում ինչ ունէի գրել ձեզ՝ այլ 12 ոչ կամիմ ցայ քարտիսիւ և դեղով գրել. զի ակն ունիմ ինձէն իսկ գալ առ ձեզ. և բերան 'ի բերան խօսել. զի ուրախութիւն մեր լիցի կատարեալ։ 13 * Ողջոյն տան քեզ որդիք քեռ քո ընտրելոյ։ Շնորհք ընդ ձեզ։

# ԹՈՒՂԹ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ
## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ
## ԵՐՐՈՐԴ։

Լ.Ե

ԵՐԻՑՈՒՆ ԱՌ 1 Գայիոս սիրելի. զոր ես սիրեմ ճշմարտութեամբ։ * Սիրելի, վամ իրաց 2 քոյ յաջողութեան, և առողջութեան, աղօթս առնեմ. որպէս իսկ յաջողուի անձինդ քո։ * Յոյժ ուրախ եղէ 'ի գալ եղբարց՝ և 3 լինել վկայ քոյոյ ճշմարտութեանդ. որպէս դու ճշմարտութեամբ գնաս։ * Մեծ ևս 4 ինչ ուրախութիւն քան զայս ոչ ունիմ, զի լսիցեմ թէ իմ որդեակքն ճշմարտութեամբ գնան։ * Սիրելի, հաւատարիմ 5 գործես զայդ՝ զոր թէ առնիցես առ եղբարս՝ զդոյն և առ օտարս։ * Որք 6 վկայեցին զքո սիրոյդ առաջի եկեղեցւոյ. որոց բարիս արարեալ յուղարկես արժանի Այ։ * Զի վասն անուանն ելին, և 7 զոչինչ յումեքէ առնուին 'ի հեթանոսաց։ * Մեք այսուհետև պարտիմք 8 ընդունել զայնպիսիսն, զի գործակիցք լիցուք ճշմարտութեանն։ * Գրեցի ինչ 9 եկեղեցւոյն. այլ որ յառաջադէմն 'ի նոցանէ է՝ Դիոտրեփէս, ոչ ընդունի զմեզ։ 10 * Վասն այսորիկ եթէ եկից՝ յիշեցուցից զգործս նորա, զորս առնէ, բանիւք չարեօք, շատախօսութեամբ աշխատ առնէ զմեզ։ և ոչ այսոքիւք շատացեալ։ ոչ ինքն ընդունի զեղբարս, և զայնոսիկ որք ընդունին, արգելու. նաև յեկեղեցւոյ ևս հանէ։ 11 * Սիրելի՝ մի լինիցիս նմանօղ չարի՝ այլ բարւոյ. զի որ զբարիս առնէ յԱյ է. և որ զչարիս գործէ նա ոչ ետես երբէք զԱծ։ 12 * Զդեմետրեայ վկայեալ յամենեցունց՝ և յեկեղեցւոյն՝ և 'ի ճշմարտութենէ, և մեք վկայեմք. և դու գիտես՝ զի ճշմարիտ է մեր վկայութիւն։ 13 * Բազում ինչ ունէի գրել քեզ. այլ ոչ կամիմ քարտիսիւ և դեղով գրել։ 14 * Զի ակնունիմ 'ի մօտոյ իսկ տեսանել զքեզ. և բերան 'ի բերան խօսել։ 15 * Խաղաղութիւն ընդ քեզ։ Ողջոյն տան քեզ սիրելիքն։ Ողջոյն տաջիր սիրելեաց մերոց իւրաքանչիւր յանուանէ։

զոր առնես առ եղբարս

Նք ելին

# ԹՈՒՂԹ ԿԱԹՈՒՂԻԿԵԱՅՑ
## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՅՈՒԴԱՅԻ
## ԱՌԱՔԵԼՈՅ։

Լ.Զ

ՅՈՒԴԱՅ 1 Յի Քի ծառայ՝ և եղբայր Յակոբայ. հեթանոսաց՝ որք յԱյ Հօրէ էք սիրեցեալք. և Յի Քի պահեալք և ընտրեալք։ * Ողորմութիւն ձեզ՝ և խա 2 ղաղութիւն և սէր բազմասցի։ 3 * Սիրելիք՝ զամ փոյթ յանձին կալեալ գրել ձեզ վասն մերոյ հասարակաց փրկութեան. հարկ յանձին կալայ գրել ձեզ և աղաչել՝ զի ճգնիցիք 'ի վերայ հաւատոյն, որ միանգամ աւանդեցաւ սրբոց։ 4 * Վասնզի սպրդեցին մտին ոմանք (որք յառաջագոյն իսկ կատարեալք էին 'ի սոյն դատաստան։) ամբարիշտք. որք զԱյ մերոյ շնորհսն

դարձ

դարձուցին յանկարգութիւն. և զմի միայն իշխանն՝ և զՏր մեր ՅՍ ՔՍ ուրացեալք: *Յիշեցուցանել ձեզ այսուհետև կամ է ինձ. որք գիտէքդ զամ: զի Տ միանգամ փրկեաց զժողովուրդն յեգիպտոսէ: և երկրորդ անգամ զանհաւատսն կորոյս: *Եւ զհրեշտակս՝ որք ոչ պահեցին զիւրեանց իշխանութիւնն, այլ թողին զիւրեանց բնակութիւն, 'ի դատաստանս մեծի աւուրն՝ մշտնջենաւոր կապանօք պահեաց 'ի խաւարի: *Որպէս Սոդոմ և Գոմոր, և որք շուրջ զնոքօք քաղաքքն, որք ըստ նմին օրինակի պոռնկեցան զհետ ընկերացն մարմնոց, կան առաջի օրինակ, զյաւիտենական հրոյն ընկալեալ զդատաստան: *Ըստ նմին օրինակի և սոքա իբրև քնով դանդաչեալք՝ զմարմին պղծեն. զՏէրութիւն քամահեն՝ զփառս հայհոյեն: *Իսկ Միքայէլ հրեշտակապետ՝ յորժամ ընդ բանսարկուին սատանայի վիճէր տայր պատասխանի վասն Մովսեսեան մարմնոյն: ոչ ժպրհեցաւ հայհոյութեան դատաստանին հանդուրժել. այլ ասէ սաստեսցէ 'ի քեզ Տր: *Իսկ սոքա զոր ինչ ոչն իմանան, հայհոյեն: և զայն ևս՝ զոր բնութեամբ իբրև զանխօս անասունս գիտեն, 'ի նոսին ապականեսցին: *Վայ է նոցա. զի ըստ ճանապարհին Կայենի գնացին: և ըստ մոլորութեան Բաղաամայ զեղխեցան զհետ վարձուց: և ըստ հակառակութեանն Կորխայ կորեան: *Սոքա են ատեցեալք, շողոմողք՝ երթեալք զհետ ցանկութեց իւրեանց. 'ի սէրս իւրեանց խարդախութեամբ: լինին ընդ ձեզ ուրախակիցք: աներկիւղ զանձինս Հարակեն: ամպք անջրդիք հողմակոծեալք: ծառք պտղակորոյսք՝ անպտուղք՝ կրկնամեռք՝ խլեալք արմատաքի: *Անսաստ ալիք ծովու. որք միշտ փրփրեն զիւրեանց զանձանց զամօթ: աստեղք մոլարք. որոց վիհ խաւարին յաւիտենից պահեալ է: *Մարգարեացաւ վս նոցա՝ և եօթներորդն յադամայ Ենօք՝ և ասէ: Ահաւասիկ եկն Տր բիւրուք սրբովք՝ հրեշտակօք: *Առնել դատաստան ըստ ամի: և յանդիմանել զամ ամբարիշտս վս գործոց իւրեանց, զոր ամբարշտեցան: և վս ամ խիստ բանից, զոր խօսեցան զնմանէ. մեղաւորք և ամբարիշտք: *Սոքա են տրտնջօղք և շոգմոգք. երթեալք ըստ իւրեանց անձանց ցանկութեց: և բերանք նոցա զամբարտաւանս բարբառին: առնուն ակն երեսաց վս օգտի:

*Բայց դուք սիրելիք՝ յիշեցէք զկանխասաց բանս առաքելոցն Տն մերոյ ՅՍԻ ՔՍԻ: *Զի ասէին ձեզ. եթէ 'ի յետին ժամանակս եղիցին մարդք արհամարհօղք. երթեալք ըստ իւրեանց ամբարշտութեանցն ցանկութեց. *Սոքա են նշաւակեալք շնչաւորք. որք զոգին ոչ ունիցին: *Այլ դուք սիրելիք՝ եղիցուք շինել զանձինս սրբութեն հաւատոց 'ի Հոգին Սբ. կացցուք յաղօթս: *Պահել զանձինս սիրովն Այ: ակնունիլ ողորմութեն Տն մերոյ ՅՍԻ ՔՍԻ 'ի կեանսն յաւիտենականս: *Եւ ոմանց դատապարտելոց լինիջիք կշտամբիչք: *Եւ զոմանս ապրեցուցանիջիք՝ յափշտակել 'ի հրոյ: և ոմանց ողորմիջիք երկիւղիւ, ատել և զպատմուճանն, որ 'ի մարմնոյն իցէ աղտեղեալ: *Եւ այնմ, որ կարողն է պահել զձեզ անարատս և անբիծս, հաստատել առաջի իւրոց փառացն աներկեան ցնծութեամբ †:

*Միայն Այ փրկչին մերոյ ՅՍԻ ՔՍԻ Տն մերոյ՝ փառք, մեծութի, զօրութի, և իշխանութի, յառաջ քան զամ յաւիտեանս. և այժմ, և յամ յաւիտեանս: Ամէն:

Թուոց 14. 37. Ծննդ. 19. 24. Զաքա. 3. 2. և զորինչ բնութբ. Ծննդ. 4. 8. Թուոց 22. 23. Թուոց 16. 1. 2. Պետ. 2. 17. Յայտ. 1. 7. զԱծ. Սաղմ. 16. 10. ԼԱ. 1. Տիմ. 4. 1. 2. Տիմ. 3. 1. 2. Պետ. 3. 3. ատելով և զայն աղտեղացեալ պատմուճանն որ մարմնոյն է: † 'ի փառաւորեան Տն մերոյ ՅԻ ՔԻ 25. Միայն այ փրկչին մերոյ, 'ի ձեռն ՅԻ ՔԻ Տն մերոյ



Եւ 'ի դարձուցանելն իմ տեսի եօթն աշտանակս ոսկիս. և 'ի մէջ աշտանակացն նման որդւոյ։ Յայտ. 1. 12.



Եւ ահա աթոռ յերկինս. և ծիածան շուրջ զաթոռովն նման տեսլեան. Յայտ. 4. 2.

# ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅ.

## Գլուխ Առաջներորդ։

1 ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՅԻ ՔԻ 'ի ձեռն որոյ ետ Աստուած ցուցանել ծառայից իւրոց՝ որ լինելոց է վաղվաղակի։ Եւ նշանակեաց առաքելով 'ի ձեռն հրեշտակի իւրոյ, առ յՈհաննէս ծառայ իւր։ 2 *Որ վկայեաց զբանն Այ, և զվկայութի ՅԻ ՔԻ՝ զոր ետես. և որ էր. և որ լինելոցն էր յետ այսորիկ։ 3 *Երանի՝ որ ընթեռնու զբանս մարգարէութեանս այսորիկ. և որ լսէ՝ և պահէ՝ զորինչ 'ի սմա գրեալ է. զի ժամանակս մերձեալ է։ 4 *Յոհաննէս առ եօթն եկեղեցիս՝ որք են յասիա. շնորհք ընդ ձեզ և խաղաղութի. ‖ յէէն, և որ էն. և որ գալոցն է. և յեօթն հոգւոյն զօրութենէ՝ որ է առաջի աթոռոյն իւրոյ։ 5 *Եւ 'ի ՅԷ ՔԷ հաւատարմէ վկայէն. ‖ որ է անդրանիկ մեռելոց. և իշխան թագաւորութեանց երկրի. որ սիրեացն զմեզ. և ելոյծ զկապանս մեղաց մերոց ‖ արեամբն իւրով։ 6 *Եւ արար զմեզ թագաւորս և քահանայս Այ և Հօր իւրոյ. նմա փառք՝ և զօրութի յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։ 7 *‖ Ահաւասիկ գալոց է ընդ ամպս երկնից. և տեսցեն զնա ամ աչք. և որք խոցեցինն. և կոծեսցին 'ի վն նր ամ ազգք երկրի. Այո. Ամէն։ 8 *‖ Ես եմ α և ω, առաջինն և վերջինն, ասէ Տր Ած. որ էն, և որ է՝ և որ գալոցն է՝ Տր ամենակալ։ 9 *Ես յՈհաննէս եղբայր ձեր, և հաւատարակից վշտաց՝ և արքայութե, և համբերութե 'ի ՔՍ ՅՍ. եղէ ես 'ի կղզիս՝ որ կոչի Պատմոս, վն բանին Այ՝ և վկայութե ՅԻ ՔԻ։ 10 *Եւ եղէ յիս հոգի յաւուր կիւրակէի. և լուայ զկնի իմ զձայն մեծ 11 իբրև զփողոյ՝ ասելով. *Զոր տեսա
նեսդ՝

‖ Ելից. 3. 14.
‖ Ա.Կոր. 15. 20. Եւ լուա զմեզ 'ի մեղաց մերոց արեամբ. Կողոս. 1. 18.
‖ Եբրայ. 9. 14. Ա.Պետ. 1. 19. Յովհ. 1. 7.
‖ Եսայ. 3. 13.
‖ Մատ. 24. 30. Յովհ. 14.
‖ Եսայ. 44. 6.

նեսդ՝ գրեա՛ 'ի գիրս. և տո՛ւր տանիլ առ եօթն եկեղեցիսն՝ որք են յԱսիայ. յԵփեսոս. և 'ի Զմիւռնիայ. 'ի Պերգամոն. և 'ի Թիւատիր. և 'ի Սարդիկայ. և 'ի Փիղադելփիայ. և 'ի Լաւոդիկիայ:

12 * Եւ դարձայ ես տեսանել զձայնն, որ խօսէր ընդ իս. և 'ի դառնալն իմ տեսի եօթն Ճրագարան ոսկի: 13 * Եւ 'ի մէջ Ճրագարանացն նման որդւոյ մարդոյ. զգեցեալ պճղնաւոր. և գօտևորեալ առ ստեամբքն գօտի ոսկեղէն: 14 * Եւ գլուխ նր և հեր ո՛րպէս զասր սպիտակ՝ և ո՛րպէս զձիւն. և աչք նր ո՛րպէս զբոց հրոյ: 15 * Եւ ոտք նորա նման պղնձի ծխելոյ 'ի մէջ հնոցի հրաշէկ. և ձայն նր իբրև զձայն ջուրց բազմաց: 16 * Եւ ունէր յաջ ձեռին աստեղս եօթն. և 'ի բերանոյ նր սուր երկսայրի սրեալ ելանէր. և երեսք նորա իբրև զարեգակն ճառագայթեալ երևէր: 17 * Իբրև տեսի զնա՝ անկայ առ ոտս նր ո՛րպէս զմեռեալ. և եդ 'ի վերայ իմ զաջ իւր՝ և ասէ. մի՛ երկնչիր: Ես եմ սկիզբն. և ես եմ վախճան: 18 * Եւ ես եմ կեանք՝ և ես եմ, որ մեռայն. և աՀաւասիկ կենդանի եմ յաւիտեանս յաւիտենից. և ունիմ զփականս մաՀու և դժոխոց: 19 * Գրեա՛, զոր տեսանեսդ՝ որ են. և որ Հանդերձեալ է լինել յետ այնորիկ: 20 * Զխորհուրդ եօթն աստեղացն, զորս տեսեր յաջու իմ, և զեօթն ոսկի Ճրագարանացն. եօթն աստեղքն՝ եօթն եկեղեցեաց Հրեշտակքն են. և եօթն աշտանակքն՝ եօթն եկեղեցիքն են:

Ես. 41.4. և 44.6.

Յայտ. 21.6. և 22. 13.

## ԳԼ: Բ.

Առ Հրեշտակս եփեսացւոց եկեղեցւոյն գրեա՛. այսպէս ասէ, որ ունի զեօթն աստեղս յաջ ձեռին իւրում. և շրջի 'ի մէջ աշտանակացն ոսկւոյ: 2 * Գիտեմ զգործս քո՝ և զվաստակս՝ և զՀամբերութիւն, և զի ո՛չ կարես բառնալ զչարսն. և փորձեցեր զնոսա, որք ասէին զանձինս առաքեալս գոլ՝ և ո՛չ էին. և գտեր զնոսա ստեայս: և բարձեր զնոսա: 3 * Եւ Համբերեցեր վն անուան իմոյ՝ և աշխատեցար: 4 * Այլ ասեմ առ քեզ. զի զսէրն քո զառաջինն թողեր: 5 * Յիշեա՛, ուստի անկարն՝ և ապաշխարեա՛, և զառաջին գործսն քո արա՛: ապա թէ ոչ՝ գամ վաղվաղակի, և շարժեցից զաշտանակս քո 'ի տեղւոջէ իւրմէ՝ եթէ ոչ ապաշխարեսցես: 6 * Բայց զայս արա՛ զի ատեցեր զգործսն նիկողայոսի. զոր և ես ատեմ: 7 * Որ ունի ականջս լսելոյ. լուիցէ զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս. որ յաղթէ; տաց նմա ուտել 'ի փայտէն կենաց՝ որ է 'ի մէջ դրախտին Այ: 8 * Եւ առ Հրեշտակն զմիւռնացւոց եկեղեցւոյն գրեա՛. այսպէս ասէ առաջինն, և առն վախճանն. որ եղև մեռեալ՝ և կեն դանացաւ: 9 * Գիտեմ զգործս քո՝ և զնեղութիւն և զաղքատութիւն. այլ աղքատութիւն քո մեծութիւն եղիցի: և ՀայՀոյիս յայնցանէ՝ որք ասեն զինքեանս Հրեայս գոլ՝ և ո՛չ են. այլ են ժողովք սատանայի: 10 * Մի՛ երկնչիր՝ վասն որոյ կամիս չարչարիլ. աՀա Հանդերձեալ է բանսարկուն արկանել 'ի ձէնջ 'ի բանտ. զի փորձիցիք. և ունիցիք զնեղութիւն աւուրս տասն: լե՛ր Հաւատարիմ մինչև 'ի մաՀ. և տաց քեզ զպսակն կենաց: 11 * Որ ունի ականջս՝ լուիցէ զինչ Հոգին ասէ առ եկեղեցիս. որ յաղթէ, ո՛չ անիրաւի յերկրորդ մաՀուանէն: 12 * Եւ առ Հրեշտակն՝ որ 'ի պերգամոյ եկեղեցւոյն, գրեա՛. այսպէս ասէ՝ որ ունի զսուրն երկսայրի սրեալ: 13 * Գիտեմ զգործս քո՝ զի բնակեալ ես՝ ուր աթոռն է սատանայի. և ունիս զանուն իմ, և ո՛չ ուրացար զՀաւատս իմ. յաւուր յորում Անթիպաս վկայն իմ Հաւատարիմ եղև. ( զի վկայ է իմ Հաւատարիմ ամենայն Հաւատացեալ) որ սպանաւ 'ի ձէնջ՝ ուր սատանայ է բնակեալ: 14 * Այլ ունիմ ասել առ քեզ սակաւ. զի կայ առ քեզ վարդապետութիւն բաղաամայ՝ որ ուսոյց զբաղակ դնել զգայթագղութիւն առաջի որդւոցն Իլի. ուտել նոցա զզոՀեալ և պոռնկիլ: 15 * Այսպէս և դու ունիս զվարդապետութիւն նիկողայեցեաց՝ զոր ես ատեմ: 16 * Արդ՝ ապաշխարեա՛ ապա թէ ոչ՝ գամ վաղվաղակի. և պատերազմեցայց ընդ նս սրով բերանոյ իմոյ: 17 * Որ ունի ականջս, լուիցէ զինչ Հոգին ասէ առ եկեղեցիս. որ յաղթէ, տաց նմա ուտել 'ի մանանայէն թաքուցելոյ. և տաց նմա զգիր սպիտակ սրբութեան. և գրեալ անուն նոր 'ի գիրն. զոր ոչ ո՛ք գիտէ՝ բայց միայն որ առնու: 18 * Եւ առ Հրեշտակն. որ 'ի Թիւատիրոյ եկեղեցւոյն՝ գրեա՛. այսպէս ասէ Որդին Այ. որոյ աչք են իբրև զբոց Հրոյ. և ոտք նր նման պղնձի ծխելոյ: 19 * Գիտեմ զգործս քո՝ և զսէր՝ և զՀաւատս՝ և զպաշտօն քո Համբերութեան. զի բազում է վաստակ քո վերջինն քան զառաջինն: 20 * Այլ ասեմ առ քեզ բազում. զի թողեր զկինն զեզաբէլ. որ ասէր զինքն մարգարէ. և ուսուցանէր զմոլորութիւն, † զծառայս իմ, պոռնկիլ՝ և ուտել զզոՀեալ: 21 * Եւ ետու նոցա ժամանակ ապաշխարել զպոռնկութիւն իւրեանց՝ 22 և ո՛չ ապաշխարեցին †: * ԱՀաւասիկ ես

Մարգինալ ծանոթութիւնք: Հրեշտակն — և ո՛չ պա Հանեցար: — Այլ ու նիմ ընդդէմ քեզ — Այլ ուսուցանէր — առաջին — և Հայ Հոյես — ո՛չ վնա սեսցի — Թուոց. 24.3. և 25.2. — Այլ ունիմ ընդդէմ քեզ սակաւ. — † և պատրեր — † 'ի նոցանէ գործոց իւրեանց.

ես արկանեմ զնա 'ի հնոց՝ և զգործակիցս իւր՝ ընդ որս շնացաւ՝ 'ի նեղութիւն մեծամեծս. եթէ ոչ ապաշխարեսցեն 'ի գործոց իւրեանց: 23 *Եւ զորդիս նց սպանից մահուամբ: և ծանիցեն ամ եկեղեցիք՝ եթէ ես եմ, որ յանդիմանեմ զերիկամունս և զսիրտս. և տամ ձեզ իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց: 24 *Այլ ձեզ ասեմ, որք 'ի Թիւատիր էք. և ոչ ունիք զվարդապետութիւն զայս. որք ոչ ծանեայք զխորհուրդս սատանայի՝ զոր խօսին. սակայն ոչ արկից զձեօք զայլ ծանրութի: 25 *Զոր ունիք, պահեցէք՝ մինչև ես գամ: 26 *Եւ որ յաղթէ՝ պահէ ըզ գործս իմ մինչև ցվախճան, տաց նմա զիշխանութի 'ի վերայ ազգաց: 27 *Եւ հովուեսցէ զնս գաւազանաւ երկաթեաւ. և իբրև զանօթ բրուտի փշրեսցէ զնս: 28 *Որպ և ես ընկալայ 'ի Հօրէ իմմէ. և տաց նմա զաստղն առաւօտու: 29 *Որ ունի ականջս լսելոյ լուիցէ զինչ Հոգին ասէ առ եկեղեցիս:

Յովհ. 16.7. Սաղմ. 7.10. Երեմ. 11. 20. 17.10 20.12 Սաղմ. 2. 9.

## ԳԼ: Գ:

1 Եւ առ հրեշտակս սարդիկեցւոց եկեղեցւոյն գրեա. այսպէս ասէ որ ունի զեօթն Հոգին Այ՝ և զեօթն աստեղս. տեսի զգործս քո՝ զի անուն կենդանւոյ ունիս՝ և մեռեալ ես: 2 *Լեր արթուն՝ և հաստատեա զայսուհետև՝ զի հանդերձեալ ես մեռանել: քանզի ոչ գտի զգործս քո կատարեալ առաջի Այ: 3 *Արդ յիշեա թէ որպ լուար. և պահեա, և ապաշխարեա: ապա թէ ոչ զուարթանաս՝ գամ որպ գող. և ոչ ոք իմանայ զգալուստ իմ առ քեզ: 4 *Որ ունիս սակաւ մի զանուն սարդիկնացւոյն. որք ոչ աղտեղացուցին զհանդերձս իւրեանց. և շրջին 'ի սպիտակս՝ որում արժանի եղեն: 5 *Որ յաղթէ՝ այսպէս զգեցցի սպիտակս: և ոչ ջնջեսցի անուն նր 'ի դպրութենէ կենաց. և խոստովանեցից զանուն նր առաջի Հօր իմոյ՝ և առաջի հրեշտակաց նր: 6 *Որ ունի ականջս՝ լուիցէ զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս: 7 *Եւ առ հրեշտակն եղբայրասիրաց եկեղեցւոյն գրեա: այսպէս ասէ՝ սբն և ճշմարիտն. որ ունի զփականս դաւթի: բանայ՝ և ոչ ոք է՝ որ փակէ. փակէ, և ոչ ոք է՝ որ բանայ: 8 *Տեսի ըզ գործս քո: ահա ետու առաջի քո զդուռն բացեալ. զոր ոչ ոք կարէ փակել: զի սակաւ է զօրութի քո: և պահեցեր զբան իմ, և ոչ ուրացար զանուն իմ: 9 *Ահաւասիկ տամ քեզ զժողովս սատանայի. որք ասեն զինքեանս հրէայս գոլ՝ և ոչ են՝ այլ ստեն. արարից զնոսա՝ զի եկեսցեն, և երկիրպագցեն առաջի ոտից քոց. և ծանիցեն, զի ես սիրեցի զքեզ: 10 *Զի պահեցեր զբան համբերութե իմոյ. և ես պահեցից զքեզ 'ի ժամ փորձութե քոյ. որ հանդերձեալ է գալ յամենայն տիեզերս. փորձել զամ բնակեալս յերեսս երկրի: 11 *Ահա գամ վաղվաղակի. կալ զոր ունիսդ՝ զի մի ոք առցէ զպսակ քո: 12 *Որ յաղթէ՝ արարից զնա սիւն տաճարի Այ իմոյ. և արտաքս այլ մի ելցէ: և գրեցից 'ի վր նր զանուն Այ իմոյ. և զանուն քաղաքի Այ իմոյ՝ զնորն Եհմի. որ իջանելոց է յերկնից յԱյ իմոյ. և զանուն իմ նոր: 13 *Որ ունի ականջս՝ լուիցէ զինչ ասէ Հոգին առ եկեղեցիս: 14 *Եւ առ հրեշտակս լաւոդիկեայ եկեղեցւոյն գրեա. այսպէս ասէ. ամէնն՝ վկայն հաւատարիմ, և ճշմարիտ: որ է սկիզբն արարածոց Այ: 15 *Գիտեմ զգործս քո՝ զի ոչ ցուրտ ես՝ և ոչ ջերմ. պարտ էր քեզ ցուրտ լինել՝ և կամ ջերմ: 16 *Այլ դու գաղջ ես՝ և ոչ ջերմ, և ոչ ցուրտ: հանդերձեալ ես փսխել 'ի բերանոյ իմմէ: 17 *Զի ասես. մեծատուն եմ՝ և մեծացայ: և ոչ ինչ կարօտիմ. և ոչ գիտես, եթէ դու ես ողորմելի՝ և հեզգ՝ և աղքատ. մերկ՝ և կոյր: 18 *Արդ ես խորհրդակից եղէց քեզ. առնել յինէն զոսկի փորձեալ 'ի հրոյ՝ զի մեծասցիս. և հանդերձս սպիտակս՝ զի զգեցցիս. զի մի երևեսցի անվայելչութի մերկութե քոյ. և դեղ դիր յաչս քո՝ զի տեսցես: 19 *Ես, զոր սիրեմ, յանդիմանեմ, և խրատեմ: նախանձեաց այժմ, և ապաշխարեա: 20 *Ահաւասիկ կամ ես առ դուրս քո՝ և բաղխեմ. եթէ ոք լուիցէ ձայնի իմում. և բանայցէ զդրունսն, մտից առ նա՝ և ընթրիս արարից առ նա. և նա ընդ իս: 21 *Որ յաղթէ՝ տաց նմա նստել ընդ իս յաթոռս իմ. որպէս ես յաղթեցի և նստայ յաթոռ Հօր իմոյ: 22 *Որ ունի ականջս՝ լուիցէ զինչ Հոգին ասէ առ եկեղեցիս:

Յովհ. 16.15. Յայտ. 14.6. Առակ. 3.12. Եբր. 12.6.

## ԳԼ: Դ:

1 Եւ յետ այսորիկ տեսի, և ահա դրունք երկնից բացեալ էին, և ձայն փողոյն, զոր լուայ զառաջինն, խօսէր ընդ իս, և ասէր. Ել այսր՝ և ցուցից քեզ՝ զինչ լինելոց է առ յապայն: 2 *Եւ վաղվաղակի եղէ ես հոգւով՝ և ահա աթոռ անդ յերկինս: 3 *Եւ 'ի վր աթոռոյն նստեալ նմանութի տեսանէ ականց յասպիսոյ՝ և սար-

դիո-

Եւ ծէր դեմէ ։ 4 *Եւ քահանայք շուրջ զա֊ թոռովն . նմանք տեսլեան զմրխտի ։ և շուրջ զաթոռովն աթոռք քսան և չորք . և 'ի վերայ աթոռոցն նստէին երիցունք քսան և չորք . զգեցեալք հան֊ դերձս սպիտակս . և 'ի գլուխս իւրեանց պսակս ոսկեղէնս ։ 5 *Եւ յաթոռոյ անտի ելանէին փայլատակմունք՝ և ձայնք՝ և որոտմունք ։ և եօթն ղամբարք հրոյ բորբոքելոյ՝ առաջի աթոռոյն . որք են եօթն հոգիքն Այ ։ 6 *Եւ առաջի ա֊ թոռոյն ծով ապակեղէն , 'ի նմանու֊ թիւն սպիտակութե սառին . և 'ի մէջ աթոռոյն՝ և շուրջ զաթոռովն չորք կենդանիք՝ լիք աչօք յետոյ և առաջոյ ։ 7 *Եւ էր կենդանին առաջին նման առիւծու . և երկրորդ կենդանին նման զուարակի . և երրորդ կենդա֊ նին ունէր երեսս մարդոյ . և չորրորդ կենդանին նման արծուոյ թռուցելոյ ։ 8 *Եւ չորից կենդանեացն էին միոյ միոյ 'ի նոցանէ վեց թևք . շուրջ լցեալք աչօք . և ոչ հանգչէին՝ ոչ զտիւ , և ոչ զգիշեր՝ յասելոյ . ‖ սբ , սբ , սբ , Տէր ԱՃ ամենակալ՝ որ էն . և որ էս . և որ գալոց ես ։ 9 *Եւ յորժամ տային կեն դանիքն զպատիւ , և զփառս՝ և զգոհու թիւն նստելոյն 'ի վերայ աթոռոյն՝ կեն դանւոյն յաւիտեանս յաւիտենից , 10 *Անկանէին քսան և չորք երիցունքն՝ առաջի նստելոյն յաթոռն . և երկիր պագանէին կենդանւոյն յաւիտեանս յաւիտենից . և դնէլով զպսակս իւր֊ եանց առաջի աթոռոյն՝ ասէին ։ 11 *Արժան է քեզ Տր ԱՃ մեր՝ առնուլ զփառս՝ և զպատիւ , և զզօրութիւն ։ զի դու ստացար զամ . և 'ի քո կամաց ստեղծան . և կան հաստատունք ։

‖ Եսայ. 6. 3.

## Գլ ։ Ե ։

1 Եւ տեսի յաջոյ ձեռինն , որ նստէր յաթոռն , զի ունէր գիրք՝ գրեալ ներքոյ և արտաքոյ ։ կնքեալ եօթն կնքով ։ 2 *Եւ տեսի զհրեշտակ մի զօ֊ րաւոր՝ զի քարոզէր ձայնիւ մեծաւ և ասէր . ով է արժանի բանալ զգիրքդ՝ և լուծանել զկնիքս դորա ։ 3 *Եւ ոչոք կարէր՝ ոչ յերկինս , և ոչ յերկրի՝ և ոչ 'ի ներքոյ երկրի՝ բանալ զգիրսն , և ոչ նայել 'ի նա ։ 4 *Եւ ողբային բազումք՝ զի ոչոք գտաւ արժանի բանալ զգիրսն , և ընթեռնուլ զնա . կամ տեսանել զնա ։ 5 *Եւ միոմն յերիցանցն ասէ ։ մի ող֊ բայք . ահաւասիկ յաղթեաց առիւծն յազգէն յուդայ , յարմատոյն դաւթի , բանալ զգիրսն՝ և զեօթն կնիքսն նր ։ 6 *Եւ 'ի մէջ աթոռոյն և չորից կենդա նեացն՝ և 'ի մէջ երիցանցն գառն կայր զենեալ . որոյ էր եօթն եղջիւրս . և եօթն աչս . որք են եօթն հոգիք Այ , առաքեալք ընդ ամենայն երկիր ։ 7 *Եւ եկն՝ և կալաւ յաջոյ ձեռանէ նր որ նստիւր 'ի վր աթոռոյն ։ 8 *Եւ յոր ժամ էառ զգիրսն , չորք կենդանիքն , և քսան և չորք երիցունքն անկանէին առաջի գառինն . և ունէին իւրաքան չիւր զքնար , և զբուրվառ ոսկիլի խունկ կով . որք են աղօթք սրբոցն ։ 9 *Եւ օրհ նէին զերգս նորս . և ասէին ։ արժանի ես առնուլ զգիրսդ՝ և բանալ զկնիքս դորա ։ զի զենար՝ և գնեցեր զմեզ ԱՃ արեամբ քով , յամենայն ազգաց՝ և 'ի լեզուաց՝ և 'ի ժողովրդոց հեթանո֊ սաց ։ 10 *Եւ արարեր ԱՃ մերոյ քա֊ հանայս՝ և թագաւորս՝ թագաւորել 'ի վերայ երկրի ։ 11 *Եւ տեսի , և լուայ զձայն հրեշտակաց բազմաց՝ որք կային շուրջ զաթոռովն , և զչորիւք կենդա֊ նեօքն , և զքահանայիւքն ։ և էր թիւ նց՝ ‖ բիւրք բիւրուց՝ և հազարք հա֊ զարաց ։ 12 * Որք ասէին ձայնիւ մեծաւ . արժանի է գառնդ զենեալ առնուլ զմեծութի , † և զիմաստութի , և զզօ րութի , և զպատիւ , և զփառս , և զօրհ նութի ։ 13 *Եւ ամ արարածք՝ որք են յերկինս և յերկրի՝ և որք 'ի ծովու՝ և որք 'ի նոսա . լուայ՝ որք ասէին ձայնիւ մեծաւ . որ նստի յաթոռն՝ և գառն օրհնեալ՝ բարձրացեալ՝ և փառաւո֊ րեալ՝ յաւիտեանս յաւիտենից ։ 14 *Եւ չորք կենդանիքն ասէին . ամէն ։ և քսան և չորք երիցունքն անկանէին առաջի նր՝ և երկիրպագանէին կեն֊ դանւոյն յաւիտեանս յաւիտենից ։

‖ Դանի. 7. 10.

† Եւ զմեծութիւն ,

## Գլ ։ Զ ։

1 Եւ տեսի , զի եբաց զմինն 'ի կնքոյն . և լուայ 'ի միոյ 'ի չորից կենդա֊ նեացն իբրև զձայն որոտման՝ զի ասէր՝ 2 գամ ։ *Եւ տեսի՝ , և ահա ձի , և որ հեծեալն էր 'ի նմա՝ ունէր զաղեղն . և Եւ տե֊ տուաւ նմա պսակ . և եկն յաղթօղն , զի յաղթեսցէ ։ 3 *Եւ յորժամ եբաց զկնիքն երկրորդ , լուայ յերկրորդ կենդանւոյն՝ զի ասէր . գամ , և տես ։ 4 *Եւ ել այլ ձի կարմիր ։ և որ հե֊ ծեալն էր 'ի նմա՝ տուաւ նմա առնուլ զխաղաղութի յերկրէ . զի զմիմեանս զենցեն . և տուաւ նմա սուր մեծ ։ 5 *Եւ յորժամ եբաց զկնիքն երրորդ , լուայ յերրորդ կենդանւոյն՝ զի ասէր . գամ , և տես ։ և տեսի , և ահա ձի սեաւ . և որ նստեալն էր 'ի վերայ նր՝ ունէր 6 կշիռս 'ի ձեռին իւրում ։ *Եւ լուայ զձայն 'ի միջոյ չորից կենդանեացն . կա ալիճ մի ցորեան դենարի միոջ . և երեք կա֊

կայիճ գարի՝ դենարի միոջ. և զձէթ
և զգինի մի՛ վնասեսցես։ *Եւ յորժամ 7
եբաց զկնիքն չորրորդ, լուայ զձայն՝ ի
Եզ. ՆարԵ. չորրորդ կենդանւոյն՝ զի ասէր՝ գամ,
և տես։ *Եւ տեսի, և ահա ձի շլուռ՝ 8
և որ նստէր ՚ի վերայ նր՝ ունէր զմահ՝
և դժոխք երթային զհետ նր. և տուաւ
† ՚ի նէ. նմա իշխանութիւն † չորրորդ մասին
աշխարհի՝ սատակել սրով՝ և սովով՝ և
մահուամբ՝ և գազանօք երկրի։ *Եւ 9
յորժամ եբաց զկնիքն հինգերորդ՝
տեսի ՚ի ներքոյ սեղանոյն զհոգիս ամ
մարդկան զենելոց վասն բանին Այ
և վասն վկայութե նր՝ զոր ունէին։
*Որք ասէին ՚ի ձայն մեծ՝ մինչև յե՞րբ 10
Տէր՝ (սբ և ճշմարիտ) ո՛չ դատես՝ և
խնդրես զվրէժ արեան մերոյ ՚ի բնակ
չաց երկրի։ *Եւ տուաւ նց արկանե 11
լիս սպիտակս. և ասացաւ նց՝ զի հան
գիցեն փոքր մի ժամանակս. մինչև
լցցին ծառայակիցք նոցա՝ և եղբարք
նոցա՝ որք հանդերձեալ էին կատարիլ
իբրև զնոսա։ *Եւ տեսի յորժամ ե- 12
բաց զկնիքն վեցերորդ, և ահա շար-
ժումն մեծ եղև. և արեգակն եղև
սեաւ իբրև զկապերտ այծեաց. և լու
սինն բոլորովին եղև արիւն։ *Եւ աս 13
տեղք երկնից թօթափեցան յերկիր։
ոպ տերև թզենւոյ՝ զի ուժգին հնչես
ցի ՚ի հողմոյ։ *Եւ երկին իբրև զմա- 14
գաղաթեայ գիրս գալարիւր։ և ամ
լերինք և կղզիք ՚ի տեղւոյ իւրեանց
շարժեցան։ *Եւ թագաւորք երկրի՝ 15
և իշխանք՝ և հազարապետք՝ և մեծա-
մեծք՝ և զօրաւորք. և ամ ծառայք՝ և
ամ ազատք՝ թաքուցին զինքեանս
‖ Եսայ. 2.19. Ովսէ. 10. 8. Ղուկ. 23. 30. յայրս և ՚ի ծերպս վիմաց։ *‖Եւ ա- 16
սէին լերանց թէ անկերո՛ւք ՚ի վերայ
մեր. և ցբլուրս թէ՝ ծածկեցէ՛ք զմեզ,
յերեսաց նստողին ՚ի վերայ աթոռոյն՝
և ՚ի բարկութե գառինն։ *Զի եկն 17
օր մեծ բարկութե նորա՝ և ո՞վ կարէ
կալ առաջի նորա։

## Գլ: Է։

Եւ յետ այնորիկ տեսի չորս հրեշ 1
տակս՝ զի կային ՚ի չորս անկիւնս
երկրի. և ունէին զչորս հողմս երկրի՝
զի մի՛ շնչեսցէ հողմ ՚ի վերայ երկրի. և
մի՛ ՚ի ծովու՝ և մի՛ ՚ի ծառս։ *Եւ տե 2
սի զայլ հրեշտակ՝ զի ել յարևելից՝ և
ունէր զկնիք Այ կենդանւոյ. և աղա-
ղակեաց ձայնիւ մեծաւ առ չորս հրեշ
տակսն՝ որոց առեալ էր զիշխանութի
ապականել զերկիր՝ և զծով։ *Եւ 3
ասէ։ Մի՛ վնասէք երկրի՝ մի՛ ծովու՝
և մի՛ ծառոց. դադարեցէ՛ք՝ մինչև կնքե
ցից զծառայս Այ իմոյ ՚ի ճակատս նց։

4 *Եւ լուայ զթիւ կնքելոցն, զի էին
հարիւր քառասուն և չորք հազարք
կնքեալք։ յամե ազգէ որդւոցն Իլի։
5 *Յազգէն յուդայ՝ երկոտասան հա-
զար կնքեալ։ Յազգէն ռուբենի՝ երկո
տասան հազար կնքեալ։ Յազգէն գա
դայ՝ երկոտասան հազար կնքեալ։
6 *Յազգէն ասերայ՝ երկոտասան հա-
զար կնքեալ։ Յազգէն նեփթաղիմայ
երկոտասան հազար կնքեալ։ Յազգէն
մանասէի՝ երկոտասան հազար կնքեալ։
7 *Յազգէն շմաւօնի՝ երկոտասան հա-
զար կնքեալ։ Յազգէն ղևեայ՝ երկո-
տասան հազար կնքեալ։ Յազգէն իսա
քարայ՝ երկոտասան հազար կնքեալ։
8 *Յազգէն զաբուղօնի՝ երկոտասան
հազար կնքեալ։ Յազգէն յօսեփայ՝
երկոտասան հազար կնքեալ։ Յազգէն
բենիամենի՝ երկոտասան հազար կն
9 քեալ։ *Եւ յետ այսորիկ տեսի՝ և
ահա ժողովուրդ բազում, որոց ո՛չ
գոյր թիւ։ յամ հեթանոսաց՝ և յամ
ազգաց. և յամ լեզուաց՝ և յամ ժողո
վրդոց. որք կային առաջի աթոռոյն՝
և առաջի գառինն արկեալ զիւրեամբք
հանդերձս սպիտակս՝ և արմաւենիս
10 ՚ի ձեռս իւրեանց։ *Աղաղակէին ՚ի
ձայն մեծ՝ և ասէին. փրկութի Այ մե
րոյ՝ որ նստի ՚ի վր աթոռոյն, և գա-
11 ռինն։ *Եւ ամենայն հրեշտակք կային
շուրջ զաթոռովն, և զերիցամբքն,
և զչորիւք կենդանեօքն. անկանէին



յերեսս

յերեսս առաջի աթոռոյն՝ և երկիրպա
գանէին Ա̃Յ։ *Ասելով Ա̃մէն։ Օրհ 12
նութիւն, և փառք, և իմաստութիւն, և
գոհութիւն, և պատիւ, և զօրութիւն, և
շնորհք Տ̃ն Ա̃Յ մերոյ՝ յաւիտեանս
յաւիտենից. Ա̃մէն։ * Եւ ասէ ցիս՝ 13
մի յերիցանց անտի. սոքա, որք զգե_
ցեալք են զհանդերձս սպիտակս՝ ո՞յք
են՝ և կամ ուստի՞ գան։ * Եւ ասացի 14
ցնա՝ Տ̃ր, դու գիտես։ և ասէ ցիս. սո
քա են՝ որք գան 'ի վշտաց մեծաց. և
լուացին զպատմուճանս իւրեանց՝ և սպի
տակացուցին արեամբ գառինն։
*Վասն այնորիկ են առաջի աթոռոյն 15
Ա̃Յ՝ և պաշտեն զնա զտիւ և զգիշեր
'ի տաճարի նորա. և որ նստի 'ի վերայ
‖Եսայ. 49.10. աթոռոյն՝ բնակեալ է 'ի նոսա։ *‖Ոչ 16
քաղցիցեն՝ և ոչ ծարաւիցեն. և ոչ ա՛ք
մեղիցէ նմ. ոչ արեգակն, և ոչ տօթ։
* Եւ գառն 'ի միջոյ աթոռոյն իւրոյ 17
հովուեսցէ զնոսա. և առաջնորդես_
ցէ նոցա 'ի կենաց աղբիւրն ջրոյ կեն
‖Եսայ. 25. 8. դանեաց։ ‖ քանզի եհատ Ա̃Ծ զամ
արտօսր յաչաց նոցա։
Յայտ. 21. 4.

## ԳԼ: Ը:

Եւ յորժամ եբաց զկնիքն եօթն 1
երորդ՝ եղև լռութիւն յերկինս՝
ոմն կէս ժամու։ * Եւ տեսի հրեշտակս 2
եօթն, որք առաջի Ա̃Յ կային, և տուա
ւ նմ եօթն փողս։ * Եւ այլ հրեշտակ 3
եկն՝ և եկաց առ սեղանն, և ունէր
խնկանոց ոսկի. և տուաւ նմա խունկ
բազում, զի մատուսցէ զաղօթս ամ
սրբոց, 'ի վ̃ր ոսկեղէն սեղանոյն առա
ջի աթոռոյն Ա̃Յ։ * Եւ ել ծուխ խըն 4
կոյն աղօթք սրբոցն 'ի ձեռաց հրեշ
տակացն առաջի Ա̃Յ։ * Եւ ելից հրեշ 5
տակն զխնկանոցն 'ի հրոյ սեղանոյն՝
և էարկ զնա յերկիր։ և եղև որոտումն,
ձայնք՝ և փայլատակումն. և շարժումն
մեծ։ * Եւ եօթն հրեշտակքն՝ որք 6
ունէին զեօթն փողս՝ պատրաստեցին
զինքեանս առ 'ի հարկանել։ * Եւ ա_ 7
ռաջին հրեշտակն եհար զփողն, և եղև
կարկուտ՝ և հուր՝ և արիւն խառնեալ՝
և արկաւ. և անկաւ յերկիր. և զերրորդ մասն
երկրի այրեաց։ և զերրորդ մասն ծա
ռոց այրեաց։ և ամ դալարի խոտ տո_
չորեցաւ։ * Եւ երկրորդ հրեշտակն 8
փողեաց՝ և իբրև զլեառն մի մեծ հր_
դեհեալ անկաւ 'ի ծով։ և եղև երրորդ
մասն ծովու արիւն։ * Եւ սատակե 9
ցաւ երրորդ մասն լողակաց՝ և որ ու_
նէր զշունչ կենդանի, ապականեցաւ։
և երրորդ մասն նաւուց ընկղմեցաւ։
* Եւ երրորդ հրեշտակն փողեաց՝ և 10
անկաւ յերկնից աստղ մի մեծ՝ բորբո
քեալ իբրև զլամբար։ և անկաւ յեր
րորդ մասն գետոց և աղբերաց։
11 *Եւ էր անուն աստեղն դառնութիւն,
և բազումք մեռան 'ի դառնութենէ
12 ջուրցն։ *Եւ չորրորդ հրեշտակն հար
կանէր, և վիրաւորիւր երրորդ մասն
արեգական, և երրորդ մասն լուսնի՝
և երրորդ մասն աստեղաց։ և խաւա_
րիւր երրորդ մասն նոցա։ և աւուր ոչ
լուսաւորէր մասն երրորդ՝ և գիշերոյ
13 նոյնպէս։ * Եւ տեսի՝ և լուայ զձայն
հրեշտակի թռուցելոյ 'ի մէջ երկնից,
զի ասէր 'ի ձայն մեծ. վա՜յ՝ վա՜յ՝ վա՜յ՝
որք բնակեալ են յերկրի. յորժամ
լիցի ձայն եւս երից փողոց, զոր կամի
ցին հրեշտակքն հարկանել։

## ԳԼ: Թ:

1 Եւ հինգերորդ հրեշտակն փողէր։
և տեսի, զի աստղ մի անկանիւր
յերկնից յերկիր, և տուաւ նմա բա_
2 նալի գբոյն անդնդոց։ * Եւ եբաց
զգուբն անդնդոց. և ելանէր ծուխ 'ի
գբոյն որպէս զծուխ հնոցի մեծի։ և խաւա
3 րեցաւ արեգակն և օդ։ *Եւ 'ի գբոյն
ելանէր մարախ յերկիր։ և տուաւ նմ
իշխանութիւն իբրև զկայթոց կարճի։
4 * Եւ ասացաւ նոցա՝ զի մի մեղիցեն
խոտոյ երկրի. և մի ամ ծառոց, բայց
միայն մարդկան երկրայնոց. որք ոչ
ունիցին զկնիքն †'ի վերայ ճակատուց †Ա̃Յ
5 իւրեանց։ * Եւ տուաւ նմ հրաման՝
զի մի սպանանիցեն զնոսա. այլ չար_
չարեսցեն զնոսա ամիս հինգ. և չար_
չարանք նմ իբրև զկայթոցս կարճի.
6 որ հարկանիցէ զմարդ։ * Եւ ‖յաւ_ ‖Եսայ.
ուրսն յայնոսիկ խնդրեսցեն մարդիկ 2.19.
զմահ՝ և ոչ գտցեն։ և ցանկասցին մե Ովսէէ.
ռանել՝ և փախիցէ 'ի նոցանէ մահ։ 10.8.
7 *‖Եւ նմանութիւն մարախոյն, 'ի նմա Ղուկ.
նութիւն ձիոյ պատրաստելոյ 'ի պատե_ 23. 30.
րազմ։ և 'ի վ̃ր գլխոյ նմ իբրև զպսակս ‖Իմաստ.
նմանեալ ոսկւոյ։ և երեսք նոցա իբրև 16.9.
8 զերեսս մարդոյ։ *Եւ հերք նմ իբրև
զհերս կնոջ. և ատամունք նոցա իբրև
9 զառիւծուց։ * Եւ ունէին զզրահս
իբրև զզրահս երկաթիս։ և ձայն թևոց
նոցա՝ իբրև զձայն կառավարաց ձիոց կառաց
բազմաց՝ որք արշաւեն 'ի պատերազմ։ ձիոց
10 * Եւ ունէին ագիս ըստ նմանութեան
կարճաց։ և խայթոց յագիս նոցա։ և
ունէին իշխանութիւն չարչարել զմար Եբրայե
11 դիկ ամիս հինգ։ * Եւ ունէին զթա ցերէն՝
գաւոր 'ի վերայ իւրեանց զհրեշտակն աբադդոն
դժոխոց։ և անուն նր եբրայեցերէն յունարէն
աբադդոն։ որ կոչի 'ի հայ բարբառ ապողիոն.
12 կորուստ։ *Ա̃ հասանիկ վայ մի էանց.
13 և վայք երկու գալոց են։ *Եւ վեց
երորդ

երրորդ հրեշտակին հարկանէր զփողն։ և լուայ զձայն 'ի չորից կենդանեացն՝ որք են առաջի սեղանոյն Ա.Ծ ։ 14 * Որ ասէր ցհրեշտակն վեցերորդ, որ ունէր զփողն․ լոյծ զչորս հրեշտակսն զկապեալսն 'ի վՐ գետոյն մեծի եփրատայ։ 15 * Եւ լուծան չորք հրեշտակքն՝ պատրաստեալք 'ի ժամ, և յօր՝ և յամիս՝ և 'ի տարի․ զի սպանցեն զերրորդ մասն մարդկան։ 16 * Եւ համարք հեծելոց զօրաց նոցա՝ բիւրք բիւրուց՝ և հազարք հազարաց՝ լուայ զթիւ նց։ 17 * Եւ տեսի ձիս 'ի տեսլեանն, և հեծեալս 'ի նոսա՝ որք ունէին զրահս հրեղէնս․ և յակինթս հրդեհեալս ծծմբով ։ և գլուխք ձիոցն իբրև զգլուխս առիւծուց․ և 'ի բերանոյ նց հուր ելանէր՝ և ծուխ՝ և ծծումբ։ 18 * Եւ 'ի հարուածս յայսցանէ մեռաւ երրորդ մասն մարդկան 'ի հրոյն՝ և 'ի ծխոյն՝ և 'ի ծծմբոյն, որ ելանէր 'ի բերանոյ նց ։ 19 * Զի իշխանութի 'ի բերանս նց է՝ և յագիս նց։ և ագիք նց նմանութի օձի։ և ունէին գլուխս՝ որով սատակէին զանիրաւսն ։ 20 * Եւ այլք 'ի մարդկանէ՝ որք ոչ մեռան 'ի հարուածոցս յայսցանէ, և ոչ ապաշխարեցին, և ոչ դարձան 'ի գործոց ձեռաց իւրեանց․ յերկրպագութէ դիւաց՝ և կռոց՝ յոսկեղինաց՝ և յարծաթեղինաց՝ և 'ի պղնձոց․ և 'ի քարէ, և 'ի փայտէ ։ որք ոչ տեսանել կարեն՝ և ոչ լսել՝ և ոչ գնալ ։ 21 * Եւ ոչ ապաշխարեցին 'ի մարդասպանութէ՝ և 'ի դեղատուութէ, և 'ի պոռնկութէ՝ և 'ի գողութէ իւրեանց։

## ԳԼ: Ժ։

1 Եւ տեսի զայլ հրեշտակ զօրաւոր՝ զի իջանէր յերկնից․ և զգեցեալ էր զամպ՝ և ծիածան 'ի գլուխ նորա ։ և երեսք նր իբրև զարեգակն։ և ոտք նորա իբրև զսիւն հրոյ ։ 2 * Եւ ունէր 'ի ձեռին իւրում գրկոյկ մի բացեալ․ և եդ զոտն իւր զաջ 'ի վերայ ծովու․ և զձախն 'ի վՐ երկրի ։ 3 * Եւ աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ և գոչեաց իբրև զառիւծ ։ և յորժամ աղաղակեաց՝ խօսեցան եօթն որոտմունքն յիւրեանց ձայնսն ։ 4 * Եւ յորժամ խօսեցան եօթն որոտմունքն՝ կամէի գրել։ և լուայ ըզ ձայն յերկնից՝ զի ասէր ։ կնքեա՛, զոր խօսեցան եօթն որոտմունքն՝ և մի՛ գրեր ։ 5 * ‖ Եւ զհրեշտակն՝ զոր տեսի, որ եդ զոտն իւր 'ի վՐ ծովու, և զմիւսն 'ի վերայ ցամաքի, համբարձ զձեռն իւր զաջ յերկինս ։ 6 * Եւ երդուաւ 'ի կենդանին յաւիտենից՝ որ հաստատեաց զերկինս՝ և զորս 'ի նմա։ և զերկիր, և զորս 'ի նմա ‡ ։ զի ոչ ևս կայ այլ ժամանակ ։ 7 * Այլ յաւուրս ձայնի եօթներորդի հրեշտակին՝ յորժամ 'ի նմա հարկանէ զփողն՝ կատարեսցի խորհուրդն Ա.Ծ ։ որպէս աւետարանեաց 'ի ձեռն ծառայից իւրոց մարգարէից ։ 8 * Եւ ձայնն՝ զոր լուայ յերկնից․ դարձեալ խօսեցաւ ընդ իս՝ և ասէ ։ երթ՛ առ զգրկոյկն, զոր ունի հրեշտակն բացեալ 'ի ձեռին իւրում, և կայ 'ի վՐ ծովու և ցամաքի ։ 9 * Եւ ես երթեալ առ հրեշտակն՝ խնդրեցի 'ի նմանէ ։ և ասէ ցիս, ‖ առ զսա և կեր զդոյն․ ‖ և դառնասցի յորովայն քո․ այլ 'ի բերան քո եղիցի քաղցր իբրև զմեղր ։ 10 * Եւ առի զգրկոյկն բացեալ 'ի հրեշտակէն՝ և կլի զնա ։ և էր 'ի բերան իմ որպ մեղր՝ և յորժամ կերի, դառնացաւ որովայն իմ ։ 11 * Եւ ասէ ցիս․ հաւանի քեզ դարձեալ մարգարէանալ 'ի ժողովուրդս՝ և 'ի հեթանոսս․ և 'ի լեզուս՝ և 'ի թագաւորս երկրի ։

## ԳԼ: ԺԱ։

1 Եւ տուաւ ինձ եղէգն նման գաւազանի․ և կայր հրեշտակն՝ և ասէ ցիս ։ արի՛, և չափեա՛ զտաճարն Ա.Ծ՝ և զսեղանն՝ և զերկրպագուսն՝ որք 'ի նմա ։ 2 * Եւ զգաւիթն, որ է արտաքոյ տաճարին՝ թո՛ղ զնա՝ և մի՛ չափեր ․ զի տուեալ է նա հեթանոսաց ։ և զքաղաքն սբ կոխեսցեն ամիսս քառասուն և երկու ։ 3 * Եւ տաց երկուց վկայից իմոց՝ և մարգարէասցին աւուրս հազար՝ երկերիւր և վաթսուն՝ զգեցեալ զքուրձ ։ 4 * Սոքա են երկու ձիթենիքն՝ և երկու ճրագք ․ որք կան առաջի Ա.Ծ յերկրի ։ 5 * Եւ որք կամիցին վնասել նց, հուր ելցէ 'ի բերանոյ նոցա՝ և կերիցէ զթշնամիս նց ։ և որք կամիցին մեղանչել նոցա՝ այսպէս սատակեսցին ։ 6 * Սոքա ունին զիշխանութի փակել զերկինս՝ զի մի՛ տեղասցի յաւուրս մարգարէութե նց ։ և ունին զիշխանութի 'ի վերայ ջուրց դարձուցանել զնս յարիւն ։ և հարկանել զերկիր յամ հարուածս՝ քանիցս անգամ կամիցին ։ 7 * Եւ յորժամ կատարեսցեն զամ աւուրս վկայութե իւրեանց, յայնժամ գազանն՝ որ ելանէ յանդնդոց՝ տացէ ընդ նոսա պատերազմ․ և յաղթեսցէ նց, և սպանցէ զնս ։ 8 * Եւ դիք նց անկեալք կայցեն 'ի մէջ հրապարակաց քաղաքի նց մեծի ։ որ անուանեալ կոչի ըստ հոգւոյն սոդոմ, և եգիպտոս ։ ուր և Տրն նց խաչեցաւ ։ 9 * Եւ տեսցեն զնս ամ ցեղք՝ և ժողովուրդք՝ և ամ լեզուք՝ և հեթանոսք ։ զի

Դան. 12.7.

զի դիք նոցա անկեալք կայցեն զերիս աւուրս և կէս ։ և ոչ † տայցեն թաղել 'ի գերեզմանս զոսկերս նց ։ 10 *Եւ որք բնակեալք են յերկրի՝ ուրախ լինին՝ և խնդան 'ի վերայ նց ։ մինչև ընծայս և պատարագս տան տանել միմեանց ։ վասն զի սոքա երկոքեան մարգարէքս չարչարեսցեն զբնակիչս երկրի ։

(† Բոյլ) (չարչարեցին)

11 *Եւ յետ երից աւուրց և կիսոյ՝ հոգի կենդանի յԱյ մտցէ 'ի նոսա, և յարիցեն ․ կայցեն 'ի վր ոտից իւրեանց, և ահ և երկիւղ մեծ անկաւ 'ի վր ամենեցուն՝ որք տեսին զնս ։ 12 *Եւ լուան զձայն մեծ՝ որ ասէր ցնս ։ վերացիք, և ելէք աստ ։ և վերացան՝ և ելին յերկինս ամպօք ։ և տեսին զնս թշնամիք նց ։ 13 *Եւ 'ի ժամուն յայնմիկ շարժումն մեծ եղև ։ և տասներորդ մասն քաղաքին ընկղմեցաւ ։ և մեռան 'ի շարժմանէն արք եօթն հազար ։ և յետ այնորիկ ահ մեծ եղև յամենեսեան ․ և փառս տային Այ երկնաւորի ։

(Ձե յերկնից)

14 *Ահաւասիկ վայն երկրորդ էանց ․ և վայն երրորդ գալոց է վաղվաղակի ։

15 *Եւ յորժամ եօթներորդ հրեշտակն հարկանէր զփողն, եղև ձայն յերկինս՝ և ասէ ։ եղև թագաւորութի ամ տիեզերաց Տն մերոյ՝ և Քի իւրոյ ։ և թագաւորեսցէ 'ի վր ամի յաւիտեանս յաւիտենից ․ Ամէն ։ 16 *Եւ քսան և չորք երիցունքն, որք նստէին յաթոռս իւրեանց առաջի Այ, անկանէին 'ի վր երեսաց իւրեանց՝ և երկիրպագանէին Տն Այ՝ և ասէին ։ 17 *Գոհանամք զքէն Տր Ած ամենակալ ։ որ էն, և էս՝ և որ գալոց ես ․ և առեր զզօրութի քո մեծ, և թագաւորեցեր ։ 18 *Եւ հեթանոսք բարկացան ։ և եկն բարկութի քո՝ և ժամանակ մեռելոց՝ զի դատեսցին ։ և տաս վարձս ծառայից քոց մարգարէից ․ և սրբոց երկիւղածաց անուան քոյ ․ փոքունց՝ և մեծամեծաց ։ և ապականես զապականիչս երկրի ։ 19 *Եւ բացաւ տաճարն Այ՝ որ յերկինս ։ և երևեցաւ տապանակն Այ՝ որ 'ի տաճարի նորա ։ և եղեն փայլատակմունք՝ և ձայնք ։ և որոտմունք, և շարժումն ․ և կարկուտ մեծամեծ ։

## Գլ ։ ԺԲ ։

1 Եւ նշան մեծ երևեցաւ յերկինս ․ կին մի արկեալ զիւրեաւ զարեգակն ․ և լուսինն 'ի ներքոյ ոտից նր ․ և 'ի վերայ գլխոյ նր պսակ յաստեղաց երկոտասանից ։ 2 *Եւ էր յղի ․ և ճչէր յերկնելն՝ և բազմօք վշտօք մերձ էր 'ի ծնանիլ ։ 3 *Եւ երևեցաւ այլ նշան յերկինս՝ և ահաւասիկ վիշապ մի մեծ

հրեղ



հրեղէն ․ որոյ էին գլուխք եօթն՝ և եղջիւրք տասն ․ և 'ի վերայ գլխոց նր եօթն խոյրք ։ 4 *Եւ տուտ նր քարշէր զերրորդ մասն աստեղաց երկնից՝ և էարկ զնոսա յերկիր ։ և վիշապն կայր առաջի կնոջն՝ որ հանդերձեալ էր ծնանիլ ․ զի յորժամ ծնցի կինն զորդի իւր՝ կլցէ զնա վիշապն ։ 5 *Եւ ծնաւ կինն զորդի արու՝ որ հանդերձեալ էր հովուել զամ հեթանոսս գաւազանաւ երկաթեաւ ․ և յափշտակեցաւ որդի նորա առ Ած, և առ աթոռ նր ։ 6 *Եւ կինն փախեաւ յանապատ՝ ուր էր տեղի նմա պատրաստեալ յԱյ ․ զի կերակրեսցի անդ աւուրս հազար երկերիւր և վաթսուն ։ 7 *Եւ եղև պատերազմ յերկինս ․ միքայէլ և հրեշտակք իւր կռուէին ընդ վիշապին ։ և վիշապն պատերազմէր զօրօք իւրովք ։ 8 *Եւ ոչ կարացին կալ ընդդէմ ։ և տեղի ոչ գտաւ նոցա յերկինս ։ 9 *Եւ անկաւ վիշապն մեծ՝ օձն առաջին ․ որ անուանեալ կոչի բէեղզեբուղ և սատանայ ․ որ մոլորեցոյց զամ տիեզերս երկրի ․ և հրեշտակք նր ընդ նմա անկան ։ 10 *Եւ լուայ զձայն մեծ յերկնից՝ որ ասէր ։ արդ եղև զօրութի, և փրկութի ․ և արքայութի Այ մերոյ ․ և իշխանութի օծելոյ նորա ․ զի անկաւ չարախօսն եղբարց մերոց ․ որ չարախօսէրն զնոցանէ առաջի Այ 11 'ի տուէ և 'ի գիշերի ։ *Եւ նոքա յաղ

թեցին նմա արեամբ գառինն․ և բանիւ վկայութեան նորա ։ և ոչ հաճեցան ընդ վիշապին մինչև 'ի մահ։

12 * Վ՟ս այսորիկ ուրախ լիցին երկինք՝ և ամենեքեան՝ որք բնակեալ էք 'ի նմա ․ վա՜յ երկրի և ծովու՝ զի անկաւ բանսարկուն առ ձեզ ․ որ ունի զցասումն բազում։ և կայցէ առ սակաւ մի ժամանակ ։ 13 * Եւ յորժամ ետես վիշապն, թէ անկաւ յերկիր՝ զհետ եղև կնոջն, որ ծնաւ զմանուկն արու։ 14 * Եւ տուան կնոջն երկու թևք արծուոյ մեծի՝ զի թռիցէ յանապատ 'ի տեղի իւր՝ ուր կերակրիւր անդ ժամանակ, և ժամանակս, և կէս ժամանակի՝ յերեսաց օձին։ 15 * Եւ եհեղ օձն 'ի բերանոյ իւրմէ զհետ կնոջն ջուր՝ զի ընկղմեսցէ զնա ։ 16 * Եւ օգնեաց երկիր կնոջն ․ և եբաց երկիր զբերան իւր, և եկուլ զջուրն, զոր եհեղ վիշապն 'ի բերանոյ իւրմէ ։ 17 * Եւ ցասեաւ վիշապն ընդ կնոջն ․ և գնաց պատերազմիլ ընդ այլ զաւակս նորա՝ որք պահէին զպատուիրանս Ա՟Յ ․ և ունէին զվկայութիւն Յ՟Ի Ք՟Ի ։ 18 * Եւ եկաց 'ի վերայ աւազոյ ծովու։

## ԳԼ։ ԺԳ։

1 Եւ տեսի զի ելանէր 'ի ծովէն գազան․ և ունէր գլուխս եօթն՝ և եղջիւրս տասն․ և 'ի վերայ եղջերացն նորա տասն խոյր ։ և 'ի վերայ գլխոյ նր՟ անուն հայհոյութեան ։ 2 * Եւ գազանն՝ զոր տեսի, նման ընձու ։ և ոտք նորա իբրև զարջու ․ և բերան նորա որպէս զառիւծու․ և ետ նմա վիշապն զզօրութի՟ն իւր՝ և զաթոռ իւր՝ և զիշխանութի՟ն իւր մեծ ։ 3 * Եւ մի 'ի գլխոց նորա վիրաւորեալ էր 'ի մահ․ և վէր մահու նորա ողջանայր ։ Եւ զարմացաւ ա՟մ երկիր ընդ գազանն․ զի ետ նմա վիշապն զթագաւորութի՟ն իւր ։ 4 * Եւ երկիր պագին վիշապին՝ որ ետ զիշխանութի՟ն գազանին․ և ասէին՝ ո՞վ իցէ նման գազանին ․ կամ՝ ո՞վ կարիցէ պատերազմիլ ընդ նմա ։ 5 * Եւ տուաւ նմա բերան խօսել զմեծամեծս, և զհայհոյութի՟ս․ և տուաւ նմա իշխանութի՟ն զամիսս քառասուն և երկու ։ 6 * Եւ եբաց զբերան իւր հայհոյութե՟բ առ Ա՟Ծ ․ և հայհոյեաց զանուն նորա՝ և զխորան նր՟ ․ և զայնոսիկ՝ որք յերկինս բնակեն ։ 7 * Եւ տուաւ նմա պատերազմիլ ընդ սուրբս՝ և յաղթել նց՟․ և տուաւ նմա իշխանութի՟ն 'ի վերայ ա՟մ ազգաց և լեզուաց և ժողովրդոց ։ 8 * Զի երկիրպագցեն նմա ամենեքեան՝ որք բնակեալ են ընդ երեսս երկրի․ որոց ոչ են գրեալ անուանք նոցա 'ի դպրութեան կենաց գառինն զենելոյ 'ի սկզբանէ աշխարհի ։ 9 * Այլ ունի ականջս լսելոյ՝ լուիցէ ։ 10 * Զի են ոմանք՝ որք 'ի գերութի՟ն վարեսցին․ և են ոմանք՝ որք սրով մեռցին․ և են ոմանք՝ որք անձամբ զանձինս սպանանիցեն․ աստ է համբերութի՟ն և հաւատ սրբոց ։ 11 * Եւ տեսի այլ գազան՝ զի ելանէր յերկրէ․ և ունէր եղջիւրս երկուս նման գառինն ․ և խօսէր իբրև զվիշապն ։ 12 * Եւ զիշխանութի՟ն զա՟մ զառաջնոյ գազանին գործէր առաջի նր՟ ․ և առնէր զերկիր և զա՟մ բնակիչս նորա, զի երկիրպագանիցեն գազանին առաջնոյ՝ մինչև ողջացաւ վէր մահու նորա։ 13 * Եւ առնէր նշանս բազումս ․ և տայր հրոյ իջանել յերկնից յերկիր՝ առաջի մարդկան։ 14 * Եւ մոլորեցուցանէր՝ որք բնակեալ են յերկրի՝ նշանօքն, որք տուեալ են 'ի ձեռս նր՟՝ առնել առաջի գազանին․ ասեն ցնա բնակիչք երկրի․ արա՛ զպատկեր գազանին, որ 'ի վերայ սրոյն եկեաց։ 15 * Եւ տուաւ նմա իշխանութի՟ն, զի տացէ զհոգի պատկերի գազանին ։ և զի խօսեսցի պատկերն․ և երկիրպագցեն նմա ամենայն բնակիչք երկրի ․ և որ ոչ պագցէ երկիր պատկերի գազանին, սպանցեն զնա ։ 16 * Եւ արասցէ զա՟մ, զփոքունս՝ և զմեծամեծս՝ և զմեծատունս՝ և զաղքատս՝ և զազատս՝ և զծառայս՝ ունել զդրոշմ յաջոյ ձեռինն՝ և 'ի վ՟ր ճակատու նց՟ ։ 17 * Եւ ոչ ո՛ք կարասցէ գնել և վաճառել՝ եթէ ոչ ունիցի զդրոշմ գրոյն՝ և զանուն գազանին․ և զթիւ անուան նորա։ 18 * Աստ է իմաստութի՟ն․ որ ունի միտս՝ համարեսցէ զթիւ գազանին ։ թիւ եղեալն մարդոյ՝ և թիւ նորա է այս․ վեցհարիւր վաթսուն և վեց։

Ծն. 9. 6. Մատ. 26.52.

## ԳԼ։ ԺԴ։

1 Եւ տեսի՝ և ահա գառն կայր 'ի վ՟ր լերինն սիոնի․ և ը՟ նմա հարիւր քառասուն և չորք հազարք ․ որք ունէին զանուն նորա՝ և զանուն հօր նր՟ գրեալ 'ի վերայ ճակատուց նոցա ։ 2 * Եւ լուայ զձայն յերկնից՝ իբրև զձայն ջուրց բազմաց՝ և զձայն որոտման մեծի․ և լուայ զձայն իբրև զքնարահարաց ․ զի հարկանիցեն զքնարս իւրեանց ։ 3 * Եւ երգէին զերգս նորա․ առաջի աթոռոյն Ա՟Յ՝ և առաջի չորից կենդանեացն՝ և առաջի երիցանցն։ և ոչ ո՛ք կարէ գիտել զերգս նց՟՝ բայց միայն հարիւր քառասուն և չորք հազարքն ․ որք գնեալք են յերկրէ։

* Սոքա



*Սոքա են՝ որք ընդ կանայս ոչ խառնակեցան. և են կուսանք։ սոքա զկնի երթան գառինն, ուր և երթայցէ։ սոքա ընտրեցան ՚ի մարդկանէ առաջի Ա՟Յ և գառինն։ *Եւ ՚ի բերանս նո՟ց ոչ գտաւ սուտ՝ զի անբիծք են առաջի աթոռոյն Ա՟Յ։ *Եւ տեսի այլ հրեշտակ թռուցեալ ՚ի մէջ երկնից. և ունէր զաւետիս յաւիտենական՝ աւետարանել ամենայն ազգաց և լեզուաց՝ որք բնակեալ են յերկրի։ *Եւ ասէր ՚ի ձայն մեծ. երկերուք յԱ՟Յ՝ և տուք փառս նմա. զի եկն ժամ՝ դատաստանի նորա. և երկիրպագէք ‖ արարչին երկնի՝ և երկրի՝ և ծովու՝ և աղբերաց ջուրց։ *Եւ այլ հրեշտակ երկրորդ գայր զհետ նորա՝ և ասէր. ‖ անկաւ, անկաւ բաբելոն մեծն՝ ՚ի գինւոյ ար բեցութեան ՚ի ցասմանէ՝ ՚ի պոռնկութեան իւրմէ՝ որ արբոյց զամ հեթանոսս։ *Եւ այլ հրեշտակ երրորդ գայր զհետ նոցա՝ և ասէր ՚ի ձայն մեծ. ով որք երկրպագեսցեն գազանին կամ պատկերի նորա՝ և կամ զդրոշմն նշանի նորա էառ ՚ի ճակատ իւր. և կամ ՚ի վերայ աջոյ ձեռին իւրում։ *Նա ըմպիցէ արբեցէ ՚ի բաժակէ ցասման Ա՟Յ, արկելոյ յանապակէ բարկութեան բաժակին. և տանջեսցի հրով և ծծմբով առաջի Ա՟Յ և գառինն։ *Եւ ծուխ նո՟ց ելցէ յաւիտեանս յաւիտենից՝ և ոչ ունին զհանգիստ՝ որք երկիրպագին գազանին ՚ի տուէ և ՚ի գիշերի. և որք երկիր պագին պատկերին՝ և առին զդրոշմ և զանուն նորա։ *Եւ համբերութիւն սրբոցն աստ է. այս՝ որք պահեն զպատուիրանս Ա՟Յ. և զհաւատս Յի՟ն։

*Եւ լուայ զձայն յերկնից՝ որ ասէր ցիս. գրեա՛, երանի մեռելոցն, որք ՚ի Տէր ննջեցին։ այժմիկ վաղվաղակի՝ զայս ասէ հոգին, քանզի հանգեան ՚ի յաշխատութենէ իւրեանց. զի միայն գործք իւրեանց չոգան զհետ նոցա։ *Եւ տեսի, և ահա ամպ սպիտակ՝ և ՚ի վերայ ամպոյն նստէր նման որդւոյ մարդոյ. և ՚ի գլուխ նորա պսակ ոսկի. և ՚ի ձեռին իւրում ունէր զգերանդի սրեալ։ *‖ Եւ այլ հրեշտակ ելանէր յերկնից. աղաղակէր ՚ի ձայն մեծ՝ և ասէր. որ նստիս ՚ի վերայ ամպոյդ՝ առաքեա՛ զգերանդիդ քո՝ և հնձեա՛, զի եկն ժամանակ հնձոց. և հասեալ են հունձք երկրի։ *Եւ առաքեաց՝ որ նստիւր ՚ի վերայ ամպոյն, զգերանդի իւր յերկիր, և հնձեցաւ երկիր։ *Եւ այլ հրեշտակ ելանէր ՚ի տաճարէն՝ որ յերկինս. ունէր և սա զգերանդի սրեալ։ *Եւ այլ հրեշտակ ել ՚ի սեղանոյն՝ որ ունէր զիշխանութիւն ՚ի վերայ հրոյ՝ և աղաղակեաց ՚ի ձայն մեծ առ հրեշտակն՝ որ ունէր զգերանդին սրեալ՝ և ասէր. առաքեա՛ զգերանդիդ քո սուր՝ և կթեա՛ զողկոյզս այգւոյ երկրի. զի հասեալ է խաղող ՚ի դմա։ *Եւ էարկ հրեշտակն զգերանդի իւր յերկիր. և կթէր զխաղողն ՚ի նմա. և արկանէր ՚ի հնձան երկրի Ա՟Յ ՚ի մեծ։ *Եւ կոխեցաւ հնձանն արտաքոյ քաղաքին. և ելանէր ՚ի հնձանէն արիւն մինչև ՚ի սանձս ձիոցն։ և երկայնութիւն նորա հազար հարիւր և վեց ասպարէզ։

| | | |
|---|---|---|
| ‖ Սաղմ. 145. 6. Գործ. 14. 14. | | |
| ‖ Եսայ. 21. 9. Երեմ. 51. 8. | | |
| զի հանգիստ յետ յաշխատութէ | ‖ Մատ. 13. 39. | երկրի |
| հազար և վեց հարիւր | | |

Գլ: ԺԵ:

Եւ տեսի այլ նշան յերկինս՝ մեծ և սքանչելի. հրեշտակս եօթն՝ որք ունէին եօթն վէրս զկնի. զի նոքօք կատարիւր բարկութիւն Ա՟Յ։ *Եւ տեսի որպէս զծով ապակեղէն խառնեալ հրով. և որք յաղթեցին գազանին՝ և պատկերին՝ և թուոյ անուան նո՟ր՝ և դրոշմի նո՟ր. նոքա կային ՚ի վերայ ծովուն ապակեղինի. և ունէին զքնարս Ա՟Յ։ *Եւ երգէին զերգս մովսէսի ծառայի Ա՟Յ. և զերգս գառինն ասելով։ թէ մեծամեծք և սքանչելիք են գործք քո՝ Տ՟Ր Ա՟Ծ ամենակալ. արդար՝ և ճշմարիտ են ճանապարհք քո, թագաւոր ամ հեթանոսաց։ *‖ Եւ ո՞վ ոչ երկիցէ՝ և փառ

զեօթն հարուածս յետինս

ամ յաւիտենից ‖ Երեմ. 10. 7.

ռաւորեսցէ զանուն քո. զի դու միայն ես սբ. և արժանի երկրպագելոյ: զի ամ հեթանոսք եկեսցեն և երկիրպագեսցեն առաջի քո Տր՝ յորժամ արդարութի քո յայտնեսցի: 5 *Եւ յետ այսորիկ տեսի՝ և բացաւ տաճար խորանին վկայութե՝ որ էր յերկինս: 6 *Եւ ելանէին եօթն հրեշտակք՝ որք ունէին եօթն հարուածս և զգեցեալք էին 'ի տաճարէն կտաւս մաքուրս՝ և պայծառս: և գօտեւորեալք էին առստեամբք իւրեանց գօտիս ոսկեղէնս: 7 *Եւ † 'ի չորից կենդանեացն տուաւ եօթն հրեշտակացն եօթն սկաւառակս լի ցասմամբն Այ կենդանւոյ յաւիտեանս յաւիտենից: 8 *Եւ լցաւ տաճարն ծխով փառացն Այ՝ և զօրութե նր. և ոչ ոք կարէ մտանել 'ի տաճարն՝ մինչև կատարեսցին եօթն հարուածքն եօթն հրեշտակացն:

† 'ի միոյն

հզօրէր

## ԳԼ: ԺԶ:

1 Եւ լուայ զձայն մեծ 'ի տաճարէն՝ զի ասէր ցեօթն հրեշտակսն. երթայք, հեղէք զեօթն սկաւառակս ցասմանն Այ յերկիր: 2 *Եւ գնաց առաջին հրեշտակն՝ և եհեղ զսկաւառակ իւր՝ † և եղեն հարուածք չարաչարք 'ի վերայ մարդկան. որք ունէին զդրոշմ գազանին. և երկիրպագէին պատկերի նորա: 3 *Եւ երկրորդ հրեշտակն եհեղ զսկաւառակն իւր 'ի ծով. և դարձան ջուրքն յարիւն մեռելոյ՝ և ամ շունչ կենդանի՝ որ էր 'ի ծովուն՝ սատակեցաւ: 4 *Եւ երրորդ հրեշտակն եհեղ զսկաւառակ իւր 'ի գետս. և յաղբիւրս ջուրց՝ և եղև արիւն: 5 *Եւ լուայ 'ի հրեշտակէն՝ որ ասէր. արդար է՝ որ էնն. և է սուրբ 'ի գործս իւր՝ զի այսպէս դատեցաւ: 6 *Վասն զի զարիւն սրբոց՝ և զարիւն մարգարէից հեղլին ամբարիշտք. վասն այնորիկ զարիւն ետ ըմպել նց ըստ արժանւոյն: 7 *Եւ լուայ զձայն 'ի սեղանոյն՝ զի ասէր. այո Տր ամենակալ: արդար՝ և ճշմարիտ են դատաստանք քո: 8 *Եւ չորրորդ հրեշտակն եհեղ 'ի սկաւառակէ իւրմէ 'ի վերայ արեգական: 9 *Եւ տուաւ նմա խորշակահար առնել զմարդիկ հրով: և տապացան մարդիկ 'ի տապ մեծ: և հայհոյեցին զԱծ՝ որ ունի զիշխանութի 'ի վերայ հարուածոցս այսոցիկ. և ոչ ապաշխարեցին 'ի փառս Այ: 10 *Եւ հինգերորդ հրեշտակն եհեղ 'ի սկաւառակէ իւրմէ 'ի վր աթոռոյ գազանին. և եղև թագաւորութի նր խաւարեալ. և ծամէին զլեզուս իւ ըստ յախտէ ցաւոցն:

† յերկիր

դատեցար

11 *Եւ հայհոյէին զԱծ երկնից 'ի ցաւոց իւրեանց՝ և յախտէ դառնութեն՝ և ոչ ապաշխարեցին 'ի գործոց իւրեանց: 12 *Եւ վեցերորդ հրեշտակն եհեղ 'ի սկաւառակէ իւրմէ 'ի վերայ գետոյն մեծի եփրատայ. և ցամաքեցան ջուրք նորա՝ զի պատրաստեսցի ճանապարհ թագաւորի յելիցն արևու: 13 *Եւ տեսի՝ զի ելանէր 'ի բերանոյ վիշապին՝ և 'ի բերանոյ գազանին՝ և 'ի բերանոյ սուտ մարգարէին ոգիք երեք անսուրբք իբրև զգորտս: 14 *Զանզի նոքա էին ոգիք դիւականք, որք առնէին զնշանս՝ և երթային առ ամ թագաւորս երկրի՝ ժողովել զնոսա 'ի պատերազմ. յօրն մեծ Տն Այ ամենակալի. 15 քանզի այսպէս ասաց Տր: *Ահա գամ իբրև զգող, երանի որք իցեն արթունք. և պահիցեն զհանդերձս իւրեանց: զի մի մերկս շրջեսցին. և երևեսցին ամօթանք իւրեանց: 16 *Եւ ժողովեցից զնոսա 'ի տեղի մի. որ կոչի եբրայեցերէն՝ արմագեդոն: 17 *Եւ եօթն երորդ հրեշտակն եհեղ 'ի սկաւառակէ իւրմէ 'ի վր օդոյ. և ել ձայն մեծ յերկնից՝ և յաթոռոյն՝ ասելով. եղև: 18 *Եւ եղեն փայլատակմունք. ձայնք՝ և որոտմունք: և եղև շարժումն մեծ՝ որպիսի չիք եղեալ 'ի սկզբանէ՝ յորմէ հետէ եղև մարդ 'ի վր երկրի՝ այնպիսի շարժումն մեծ: 19 *Եւ եղև քաղաքն մեծ յերիս մասունս՝ և քաղաքք ազգացն անկան. և բաբիլոն մեծ յիշեցաւ առաջի Այ. տալ նմա զբաժակն գինւոյ ցասման բարկութե նորա: 20 *Եւ ամ կղզիք փախեան. և լերինք 21 'ի միջոյ բարձան: *Եւ կարկուտ մեծ իբրև կշիռ տաղանդի միոջ իջանէր յերկնից 'ի վերայ մարդկան. և հայհոյէին մարդիկ զԱծ յերկինս՝ վասն հարուածոց կարկտին՝ զի մեծ էր հարուածն՝ և սաստիկ:

ելանէին

Մատ. 24.43. Ղուկ. 12.39. Յայտ. 3. 3.

## ԳԼ: ԺԷ:

1 Եւ եկն մի ոմն յեօթն հրեշտակացն՝ որք ունէին զեօթն սկաւառակսն՝ խօսեցաւ ընդ իս՝ և ասէ: եկ այսր՝ և ցուցից քեզ զդատաստան մեծ պոռնկին՝ որ նստի 'ի վերայ ջուրց բազմաց: 2 *Ընդ որում պոռնկեցան թագաւորք երկրի՝ և արբեցան բնակիչք երկրի 'ի գինւոյ արբեցութե պոռնկութե նորա: 3 *Եւ առտարաւ զիս յանապատ հոգւով. և տեսի զկին մի՝ զի նստէր 'ի վերայ կարմիր գազանի. և լի էր անուամբ հայհոյութե բերան նորա. և գազանն՝ զոր տեսի՝ ունէր գլուխս 4 եօթն՝ և եղջիւրս տասն: *Եւ կինն զգե-

զգեցեալ էր ծիրանիս և կարմիրս. և զարդարեալ ոսկւով և մարգարտով. և ականք պատուականօք՝ ունելով զբաժակ ոսկի 'ի ձեռին իւրում, և լի էր գարշելի և անմաքուր պոռնկութեամբ։

5 *Եւ 'ի ճակատ նորա գրեալ անուն։ խորհուրդ։ բաբելոն մեծ՝ մայր պոռնկութեանց և գարշութեանց երկրի։ 6 *Եւ տեսի զկինն արբեցեալ յարենէ սրբոցն՝ և յարենէ ամենայն վկայիցն Յիսուսի։ և զարմացայ՝ տեսեալ զնա զարմացմամբ մեծաւ։ 7 *Եւ ասէ ցիս հրեշտակն՝ ընդէ՞ր զարմացար. ես ասացից քեզ զխորհուրդ կնոջն, և զգազանին, որ բարձեալ ունի զնա. որ ունի զեօթն գլուխս՝ և զտասն եղջիւրս։ 8 *Եւ գազանդ՝ զոր տեսեր՝ որ էր, և չէ. և հանդերձեալ է ելանել 'ի դժոխոց՝ և 'ի կորուստ երթալ. և զարմասցին ամենեքեան՝ որք բնակեալք են 'ի վերայ երկրի։ (որոց ոչ են գրեալք անուանք 'ի գիր կենաց 'ի սկզբանէ աշխարհի։) զոր տեսանէին զգազանն, զի էր՝ և չէ. և մերձ է։ 9 *Աստ է իմաստութիւն որ ունի միտս։ եօթն գլուխքն՝ եօթն լերինք են. ուր կինն նստեալ էր 'ի վերայ նոցա։ և նոքին թագաւորք եօթն են. և թագաւորք գոլով։ 10 *Հինգքն անկան, և մինն եկաց. և մինն ոչ է եկեալ։ և յորժամ գայ՝ սակաւ մի ժամանակ ունի։ 11 *Եւ գազանն՝ որ էր՝ և չէ՝ և նա ութերորդ է. և է յեօթանց անտի, և 'ի կորուստ երթալոց է։ 12 *Եւ տասն եղջիւրքն՝ զորս տեսեր՝ տասն թագաւորք են. որոց չև ևս է առեալ զթագաւորութիւն, այլ առնուն՝ և կան իշխանք 'ի մի ժամ. և առնուն նոքա զիշխանութիւն ընդ գազանին։ 13 *Սոքա զմի կամս ունին՝ և զզօրութիւն և զիշխանութիւն իւրեանց՝ գազանին տան։ 14 *Եւ ընդ գառին պատերազմին. և գառն յաղթեսցէ նոցա՝ ‖ զի Տէր է տերանց. և թագաւոր թագաւորաց. և որք ընդ նմա՝ կոչեցեալք են, ընտրեալք՝ և հաւատացեալք։ 15 *Եւ ասէ ցիս՝ ջուրքն զորս տեսեր՝ ուր նստիր պոռնիկն՝ ժողովուրդք են. և բազմութիւնք՝ և ազգք՝ և լեզուք։ 16 *Եւ տասն եղջիւրքն՝ զորս տեսեր՝ գազանին. նոքա ատեսցեն զպոռնիկն՝ և ատեսցեն զնա. և զմարմինս նորա կերիցեն՝ և այրեսցեն զնա հրով։ 17 *Քանզի Աստուած ետ 'ի սիրտս նոցա առ 'ի լինիլ նոցա 'ի մի կամս. և տալ զթագաւորութիւն գազանին. մինչև կատարեսցի բանն Աստուծոյ։ 18 *Եւ կինն զոր տեսեր՝ է քաղաքն մեծ՝ որ ունի զթագաւորութիւն 'ի վերայ թագաւորութեանց երկրի։

Margin notes, left column: Եւ զարմա ցին (beside verse 8) · 'ի տեսա նելն (beside verse 8) · ‖ 1. Տիմ. 6.15. Յայտ. 19.16. (beside verse 14) · Եւ հաւատա րիմք. (beside verses 14–15) · Եւ ապա կանեսցեն զնա. (beside verse 16)

## ԳԼ: ԺԸ.

1 Եւ յետ այսորիկ տեսի այլ հրեշտակ իջեալ յերկնից՝ որ ունէր զիշխանութիւն մեծ, և երկիր լուսաւորեցաւ 'ի փառաց նորա։ 2 *Եւ աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ ասելով. ‖ անկաւ՝ անկաւ բաբելոն մեծ. որ եղեալ էր բնակութիւն դիւաց՝ և արգել ամենայն այսոց պղծոց։ և բանտ պահպանութեան ամենայն ոգւոց անսրբոց՝ և ատելեաց։ 3 *Զի 'ի բարկութենէ գինւոյ պոռնկութեան նորա արբին ամենայն ազգք և թագաւորք երկրի, որք ընդ նմա պոռնկեցան. և վաճառականք երկրի՝ նորա զօրութեամբն յօրանալոյ մեծացան։ 4 *Եւ լուայ զձայն յերկնից՝ զի ասէր. ելէք 'ի միջոյ դորա ժողովուրդ իմ. զի մի հաղորդք լինիցիք մեղաց դորա †։ 5 *Քանզի հասին մեղք նորա մինչև յերկինս. և յիշեաց Տէր զանօրէնութիւնս նորա։ 6 *Եւ հատուցէք դմա՝ որպէս և հատոյցն ձեզ. և առցէ դա երկպատիկ ըստ գործոց իւրոց. և զբաժակն որով խառնեացն՝ խառնեցէք դմա կրկին։ 7 *Եւ որչափ փառաւորեաց զինքն, և խայտաց. այնչափ հատուցէք դմա զուգ † զի 'ի սրտի իւրում ասէր՝ եթէ յամենայն ժամ ‖ նստայց ես թագուհի՝ և այրի ոչ ես եղէց՝ և զուգ ոչ տեսից։ 8 *Վասն այնորիկ 'ի միում աւուր եկեսցեն 'ի վերայ դորա հարուածք՝ մահ, և սուգ, և սով. և 'ի հուր այրեսցի. զի հզօր է Տէր Աստուած՝ որ դատեցաւ զնա։ 9 *Եւ լացցեն, և կոծեսցին թագաւորք երկրի 'ի վերայ դորա՝ որք ընդ դմա պոռնկեցան, և խաղացին. և հեծեսցեն՝ յորժամ տեսցեն զծուխ կիզման դորա։ 10 *Ի հեռաստանէ կայցեն վասն երկիւղի տանջանաց դորա՝ և ասասցեն։ վա՜յ, վա՜յ քաղաքիդ մեծի բաբելոնի. քաղաք հզօր՝ զի 'ի միում ժամու եկին հասին դատաստանք քո։ 11 *Եւ վաճառականք երկրի ողբասցեն, և սգասցին 'ի վերայ քո՝ զի զբեռինս նոցա՝ ոչ ոք է որ գնէ։ 12 *Եւ շահ, որ 'ի քէն՝ ոչ ևս իցէ՝ ոսկւոյ՝ և արծաթոյ. և ականց պատուականաց՝ և մարգարտոյ. և բեհեզոյ՝ և ծիրանւոյ՝ և ոսկեթելի՝ և որդան։ (և ամենայն փայտ խնկոյ՝ և ամենայն անօթ փղոսկրեայ. և ամենայն անօթ 'ի փայտէ պատուականէ։ 13 *Եւ 'ի պղնձոյ՝ և յերկաթոյ՝ և 'ի կճոյ. և կինամոմոն։) և ամենայն խունկ, և իւղ, և կնդրուկ. և գինի, և ձէթ, և նաշիհ, և ցորեան, և ստացուածք ամենայն, և արջառ՝ և ոչխար. երիվարաց և կառաց՝ որ վայել է մարմնոց և ոգւոց մարդկան։

*Եւ

Margin notes, right column: ‖ Եսայ. 21.9. Երեմ. 51.8. Յայտ. 14.8. (beside verse 2) · ամենայն թռչնոց (beside verses 2–3) · † և 'ի հարուածոց դորա մի առնուցուք։ (beside verses 4–6) · † և զզանս ջանս. (beside verse 7) · ‖ Եսայ. 47.8. (beside verses 7–8) · դատեաց (beside verse 8)

*Եւ ամ ցանկութիւն անձին քո գնաց
'ի քէն. և լուսափայլ վայելչութիւն,
պարարան, և գէրն, և սպիտակն գնաց
'ի քէն։ և ոչ ևս այլ գտցես զայդ։
*Եւ ամ չահավաճառք այսոքիկ մե
ծացեալք 'ի քէն 'ի բաց կայցեն վասն
երկիւղի տանջանաց քոց լալով և սուգ
առնլով։ *Եւ ասասցեն. վա՜յ, վա՜յ
քաղաք մեծ. որ զգեցեալէիր զբե
հեզս և զծիրանիս և որդան և զոսկե
զօծս. և քարինս պատուականս և
մարգարիտս։ *Զի 'ի միում ժամու
ապականեցաւ այսչափ մեծութիւն քո։
և ամ նաւավար և ամ, որք 'ի տեղիս
տեղիս նաւէին. և նաւազք. և որք
միանգամ ուղականաւ գործէին 'ի հե
ռաստանէ կայցեն լալով։ *Եւ աղա
ղակեսցեն տեսանելով զծուխ կիզման
նր. և ասելով. ո՞ նման է քաղաքիս այս
միկ մեծի։ *Եւ արկցեն զհող 'ի վր
գլխոց իւրեանց և գուժալով ձայնիւ
մեծաւ լալով և ողալով ասասցեն.
վա՜յ վա՜յ քաղաք մեծ, որով ամենե
քեան մեծանային, որք ունէին զնաւս
'ի ծովս վասն պատուականութե քոյ։
զի 'ի միում ժամու ապականեալ կոր
ծանեցար։ *Ուրախ լերուք 'ի վր նր
երկինք և սուրբ առաքեալք և մար
գարէք. զի դատեաց Աճ զդատաս
տանս ձեր 'ի նմանէ։ *Եւ եառ հրեշ
տակ մի հզօր զքար մի մեծ իբրև զեր
կան, և ընկէց 'ի ծով ասելով. այսպ
յարձակմամբ անկցի բաբիլոն քաղաք
մեծ. և այլ ոչ ևս գտցի։ *Եւ ձայն
քնարերգաց, և երաժշտականաց ա
րուեստականաց և փողահարաց և
թմբկի, այլ ոչ ևս լուիցի 'ի քեզ։
*Եւ լոյս ճրագի, և ձայն երկանի
այլ ոչ ևս երևեսցի 'ի քեզ. և ձայն փե
սայի և հարսին ոչ ևս լուիցի 'ի քեզ.
և ոչ վաճառականք քո փառաւորք և
մեծամեծք երկրի. որք զուարճացեալք
էին 'ի քեզ. վն զի կախարդութբ դե
ղատուութե քոյ մոլորեցան ամենայն
ազգք։ *Եւ 'ի քեզ ամենայն արիւն
մարգարէից և սրբոց գտաւ. և ամ
գրելոց յերկրին կենդանեաց։

## ԳԼ: ԺԹ:

Եւ յետ այսորիկ լուայ զձայն մեծ
բազմութե յերկինս ասելով։
ալէլուիա։ փրկութիւն, և փառք. և
պատիւ, և զօրութիւն Այ մերոյ։
*Զի ճշմարիտ և արդար են դատաս
տանք նր։ զի դատեաց զպոռնիկն մեծ
† 'ի պոռնկութե իւրում, և խնդրեաց
զվրէժ արեան ծառայից իւրոց 'ի ձե
ռաց նր։ *Եւ կրկին անգամ օրհնե
ցին, և ասացին. ալէլուիա։ և ծուխ
նր ելանէր յաւիտեանս յաւիտենից։
*Եւ անկան քսան և չորք երիցունքն
և չորք կենդանիքն. և երկրպագեցին
Այ. որ նստէրն յաթոռ փառաց.
ասելով։ Ամէն ալէլուիա։ *Եւ ձայն
յաթոռոյն ելանէր ասելով։ օրհնե
ցէք զԱծ մեր ամ ծառայք նր. և որք
երկնչիք 'ի նմանէ փոքունք և մեծա
մեծք։ *Եւ լուայ զձայն բազմութե
մեծի. իբրև զձայն ջուրց բազմաց. և
իբրև զձայն հզօր որոտմանց. ասելով
դարձեալ. ալէլուիա։ վասնզի թա
գաւորեաց Տր Աճ մեր ամենակալ։
*Խնդամք և ցնծամք. և տամք փառս
նմա. զի եկն հարսանիք գառինն։ և
կին նր պատրաստեաց զինքն։ *Եւ
տուաւ նմա զգենուլ բեհեզս սպի
տակս սուրբս և լուսափայլս։ որ է բե
հեզն արդարութիւն սրբոցն։ *Եւ մի
յերիցանցն ասէ ցիս. գրեա զայդ։ || Ե
րանելիք են ամենեքեան որք կոչե
ցեալք են յընթրիս հարսանեաց գա
ռինն։ *Եւ ես անկեալ առաջի ոտից
նորա, զի երկրպագից նմա։ Եւ ասէ
ցիս. անսա՛, մի՛ անկանիր առաջի իմ.
քանզի և ես ծառայակից քո եմ, և եղ
բարց քոց, որք ունին զվկայութիւն Յի
Քի։ Տն Այ միայն երկրպագեա՛ քան
զի հաստատուն Յի է տեսիլդ։ և հոգի
մարգարէութեդ։ զի վկայութիւն Յի է
Հոգւովն սրբով. որ 'ի մարգարէսն էր։

Margin notes: ամէնօրհնեց եալլեալ; † որ ապականեաց զերկիր; || Մատ. 22. 2. Ղուկ. 14. 16.



*Եւ

11 *Եւ տեսի զերկինս բացեալ. և ահա ձի սպիտակ. և որ հեծեալն էր 'ի նմա՝ † հաւատարիմ, և ճշմարիտ ։ և արդարութեամբ դատէ՝ և պատերազմի ։

† կոչէր

12 *Եւ աչք նր՟ բոց հրոյ ։ և 'ի վերայ գլխոյ նր՟ պսակս բազումս ։ և ունէր զանուն գրեալ. զոր ոչ ոք գիտէ՝ բայց միայն ինքն ։

[illegible] գլխոյ

13 *‖ Եւ արկեալ զիւրեաւ զհանդերձ ներկեալ արեամբ ։ և կոչիւր անուն նր՟ բան ԱՅ՟ ։

‖ Եսայ. 63. 1.

14 *Եւ զօրավարք երկնից՝ և զօրք երկնից զհետ երթային նր՟ ձիօք սպիտակօք. զգեցեալք բեհեզս սբ՟ս և սպիտակս ։

15 *Եւ 'ի բերանոյ նր՟ ելանէր սուր † սրեալ. զի նովաւ հարցէ զազգս ։ ‖ և նա հովուեսցէ զնս՟ գաւազանաւ երկաթեաւ ։ և նա կոխեսցէ զհնձան գինւոյ՝ ցասման բարկութեան ԱՅ՟ ամենակալի ։

† երկսայրի

‖ Սաղմ. 2. 9.

16 *Եւ ունէր 'ի վերայ պատմուճանի իւրոյ, և 'ի վր՟ անդամոց իւրոց գիր գրեալ ։ ‖ Թագաւոր թագաւորաց. և Տր՟ տերանց ։

‖ 1. Տիմ. 6. 15.

17 *Եւ տեսի այլ հրեշտակ, որ կայր 'ի վր՟ արեգական. զի աղաղակեաց 'ի ձայն մեծ ա՟մ հաւուց թռուցելոց 'ի մէջ երկնից՝ ասելով. եկայք, և ժողովեցարուք յընթրիս մեծին ԱՅ՟ ։

Վէր. 17. 14.

18 *Եւ կերիջիք զմարմինս թագաւորաց. † և զմարմինս հզօրաց. և զմարմինս երիվարաց՝ և ա՟մ հեծելոց 'ի նոսա ։ և զմարմինս ազատաց և ծառայից՝ մեծի և փոքու ։

† հազարապետս հազարապետաց.

19 *Եւ տեսի զգազանն՝ և զթագաւորս երկրի՝ և զզօրս նց՟ ժողովեալս առնել զպատերազմ ընդ այնմ, որ հեծեալն էր 'ի ձի սպիտակ՝ և ընդ զօրս նր՟ ։

20 *Եւ ըմբռնեցաւ գազանն. և ընդ նմա սուտ մարգարէն՝ որ առնէր զնշանսն առաջի նր՟. զորս մոլորեցոյց. և ետ առնուլ զդրոշմն գազանին. և զերկրպագուս պատկերի նր՟ ։ և կենդանւոյն արկին զնս՟ 'ի լիճ հրոյն այրեցելոյ ծծմբով ։

21 *Եւ այլքն մեռան 'ի սրոյ հեծելոյն 'ի վերայ ձիոյն. յորոյ բերանոյ ելանէր սուրն. և ա՟մ թռչունք յագեցան 'ի մարմնոց նոցա ։

## Գլ։ Ի։

1 Եւ տեսի այլ հրեշտակ՝ զի իջանէր յերկնից. և ունէր զփականս դժոխոց ։ և շղթայս մեծ 'ի ձեռին իւրում ։

2 *Եւ ըմբռնեաց զվիշապն՝ զօձն առաջին. որ է բանսարկուն և սատանայ ։ և կապեաց զնա զհազար ամ ։

3 *Եւ էարկ զնա յանդունդս դժոխոց. և փակեաց, և կնքեաց զնա՝ զի այլ մի ևս մոլորեցուսցէ զազգս. մինչև կատարեսցի հազար ամն ։ և յետ այնորիկ պարտ է լուծանիլ նմա սակաւ ժամանակս ։

4 *Եւ տեսի աթոռս. և նստան 'ի վր՟ նոցա ։ և դատաւորութի՟ տուեալ նց՟ ։ ընտրել զհոգիս չարչարեցելոցն վս՟ վկայութեանն Յի՟ և վս՟ բանին ԱՅ՟ ։ և զորս ոչ երկրպագին գազանին. և ոչ առին զդրոշմն նորա 'ի ճակատս իւրեանց, և ոչ 'ի վր՟ աջոյ ձեռին իւրեանց ։ և կացին, և թագաւորեցին ընդ Ք՟Ի

5 մինչև 'ի հազար ամ ։ *Եւ յետ այսորիկ 'ի մեռելոց ոչ ոք եկեաց, մինչև 'ի կատարել հազար ամին ։ այս է յարութի՟ առաջին ։

6 *Երանի սրբոցն, որք ունին բաժին 'ի յարութեան առաջնում ։ 'ի վր՟ սոցա երկրորդ մահ ոչ ունի իշխանութի՟ ։ այլ եղիցին քահանայք ԱՅ՟, և Տն՟ Յի՟ Ք՟Ի ։ և թագաւորեսցեն ը՟ նմա հազար ամ ։

7 *‖ Եւ յետ հազար ամին լուծցէ զսատանայ՝ և հանցէ 'ի բանտէ անտի ։ ելցէ և մոլորեցուսցէ զազգս ա՟մ ընդ չորս կողմանս երկրի ։ և զգոգ՝ և զմագոգ առցէ 'ի ձեռս՝ ժողովել նոքօք զա՟մ զօրս 'ի պատերազմ ։

‖ Եզեկ. 39. 2.

8 որոց թիւ իբրև զաւազ ծովու ։ *Եւ ելցեն 'ի լայնութիս երկրի. և պատեսցեն զբանակս սրբոցն, և զքաղաքն սիրելի ։

9 *Եւ իջցէ հուր յերկնից առ յԱՅ՟ և կերիցէ զնս՟ ։ և արկցէ զնս՟ 'ի ծովն հրոյ և ծծմբոյ ։ ուր էր գազանն,

10 *Եւ սուտ մարգարէն ։ և չարչարեսցին զտիւ և զգիշեր ։

և գեհեն, որ մոլորեցուցանէր զնս՟, արկաւ 'ի ծովն

11 *Եւ տեսի զաթոռ սպիտակ մեծ. և 'ի վր՟ նր՟ նստեալ՝ յորոյ երեսացն երկնչէին, և փախչէին երկինք և երկիր. և տեղի ոչ գտաւ նց՟ ։

12 *Եւ տեսի զմեռեալս՝ զմեծամեծս և զփոքունս, որք կային առաջի աթոռոյն ։ և գրեանք բանային ։ և այլ գիրք բացաւ կենաց ։ և դատեցան մեռեալքն 'ի գրելոցն՝ ըստ գործոց իւրեանց ։

13 *Եւ ետ ծով զմեռեալս իւր. և մահ և դժոխք զիւրեանց մեռեալս ։ և դատեցան իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց ։

14 *Եւ մահ՝ և դժոխք մատնեցան 'ի լիճն հրոյ ։ այս է մահն երկրորդ ։

15 *Եւ որոք ոչ գտաւ 'ի գիրն կենաց գրեալ՝ արկաւ 'ի լիճ հրոյն ։

## Գլ։ ԻԱ։

1 Եւ ‖ տեսի երկին նոր՝ և երկիր նոր ։ քանզի առաջին երկին և երկիր

2 էանց. և ծով ոչ գոյր ։ *Եւ զքաղաքն սր՟ զնորն եէմ՟ տեսի, զի իջանէր յԱՅ՟ և յերկնից ։ զարդարեալ և պատրաստեալ ո՟պ հարսն առն իւրոյ ։

‖ Եսայ. 65. 17. և 66. 22. 2. Պետ. 3. 13.

3 *Եւ լուայ զձայն մեծ յերկնից որ ասէր ։ ահաւասիկ խորանն ԱՅ՟ 'ի մէջ մարդկան. և բնակեսցի ընդ նոսա ։ և նոքա ժողովուրդք նմա ։ և սա ԱԾ՟ նոցա ։

4 *‖ Եւ ջնջեսցէ զա՟մ արտասուր յաչաց նց՟ ։ և մահ ոչ ևս գոյ ։ ոչ սուգ. և ոչ

աղա

‖ Եսայ. 25. 8. Վէր. 7. 17.

աղաղակ. ոչ ցաւք՝ և ոչ աշխատութիւնք
‖ Եսայ. եւս գոյ։ զի առաջինքն անցին։ * Եւ ա- 5
43. 19. սաց ցիս՝ որ նստէր 'ի վր աթոռոյն։
2. Կորն. ‖ Ահաւասիկ առնեմ զամ նոր։ և ասէ
5.17. ցիս, գրեա. այսք բանք ճշմարիտք են
եղև։ և հաւատարիմք։ * Եւ ասէ ցիս՝ եղէ, 6
ես եմ ա այֆա, և ω օ. սկիզբն և կա
տարած։ ես ծարաւելոցն տաց յաղբե
րէ ջրոյ կենաց ձրի։ * Որ յաղթէ, ժա 7
ռանգեսցէ զայս ամ։ և ես եղէց նմ
Ա՚Ծ։ և նոքա եղիցին ինձ որդիք։
† Եւ պղծ * Եւ ծուլացն, և անհաւատիցն. † սպա 8
ծոց. Եւ նողաց, և պոռնկաց. և կախարդաց՝ և
կռապաշտից՝ և դեղատուաց. և ամ
բաժինն ստոց՝ ամբարշտաց։ որոց բաժինն
եղիցի 'ի լճին այրեցելոյ հրով և ծծմբով։
որ է մահն երկրորդ։



* Եւ եկն առ իս մի յեօթանց հրեշ- 9.
տակացն, որք ունէին զեօթն սկաւա
եօթն հար ռակս լցեալս եօթն վախճանօք կատա
ուածովք. րելովք՝ խօսեցաւ ընդ իս և ասէ։ Եկ,
վերջնովք. ցուցից քեզ զհարսն՝ և զկին գառինն։
* Եւ էառ տարաւ զիս 'ի լեառն մի 10
բարձր և մեծ՝ հոգւով։ և եցոյց ինձ
զքաղաքն մեծ և սրբ՝ երէմ։ զի իջեալ
յերկնից առ յԱՅ։ * Եւ ունէր զփառս 11
ԱՅ։ Եւ 'ի նմա լուսաւորութի. նման-
նեալ ականց պատուականաց՝ քար
յասպիս սառնատեսակ և կենդանի։
* Եւ էին պարիսպք նր մեծ, և բարձր։ 12
և ունէր դրունս երկոտասան։ և յեր-
կոտասան դրունսն երկոտասան հրեշ
տակս, և անուանք իւրաքանչիւրոյ 'ի
վերայ դրանցն գրեալք էին՝ ըստ եր-
13 կոտասան ցեղիցն Իէլի։ * Յարևելից
կողմանէ դրունք երեք։ և 'ի հիւսիսոյ
կողմանէ դրունք երեք։ և 'ի հարաւոյ
կողմանէ դրունք երեք։ և յարևմտից
14 կողմանէ դրունք երեք։ * Եւ պարիսպ
քաղաքին ունէր հիմունս երկոտա-
սան։ և 'ի նոսա երկոտասան անուանք
երկոտասան առաքելոց գառինն։
15 * Եւ որ խօսէրն ընդ իս, ունէր զե-
ղէգն ոսկի 'ի ձեռին իւրում, զի չա-
փեսցէ զքաղաքն՝ և զդրունս նորա՝ և
16 զպարիսպս նորա։ * Եւ էր քաղաքն
քառակուսի։ և որչափ երկայնութի
նորա՝ նոյնչափ և լայնութիւն՝ և բարձ
րութիւն՝ հաւասար։ Եւ էր չափ երկայ ‖ Եսայ.
նութե նր երկոտասան հազար ասպա 60. 2
րէզ։ և լայնութի նր՝ և բարձրութիւն
17 միաչափ, կիւլօս։ * Եւ չափեաց զպա-
րիսպ նորա հարիւր քառասուն և չորս
ասպարէզ։ չափ մարդոյ՝ որ է հրեշտա
18 կի։ * Եւ էր շինուած պարսպաց քա
ղաքին յասպիս։ և քաղաքն էր ոսկի
մաքուր, նման ապ՝ և սպիտակ ապա
19 կւոյ։ * Եւ հիմունք † քաղաքին յամ † պարսպ
ականց պատուականաց †։ հիմն առա- † զարդա
ջին յասպիս։ երկրորդն շափիղա։ եր- րեալ
րորդն պղնձիդոյն։ չորրորդն զմրուխտ։
20 * Հինգերորդն եղնգնաքար. վեցե-
րորդն սարդիոն։ եօթներորդն ոսկէ
քար։ ութերորդն բիւրեղ։ իններորդն
տպազիոն։ տասներորդն քրիսոպրաս։
մետասաներորդն յակինդ։ երկոտա-
21 սաներորդն ամեթօս։ * Եւ էին եր-
կոտասան դրունք յերկոտասան մար-
գարտաց՝ միաձև։ և իւրաքանչիւրոյն
դրունք՝ էին մի մի դուռն՝ 'ի միոյ միոյ
մարգարտոյ. և ընդարձակութի քա-
ղաքին ոսկի մաքուր՝ ոպ զապակի պայ
22 ծառ։ * Եւ տաճար ոչ տեսի 'ի նմա՝
քանզի ՏՐ ԱԾ ամենակալ տաճար էր
23 'ի նմա՝ և գառն։ * ‖ Եւ քաղաքին ‖ Եսայ.
չէին պէտք արեգական և լուսնի, զի 60.19.
լուսաւորեսցեն զնա։ քանզի փառքն
ԱՅ լուսաւորէին զնա յամ ժամ. և
24 ճրագ 'ի նմա գառն։ * Եւ գնային
հեթանոսք 'ի լոյս նր։ և թագաւորք
երկրի լուսազգեցեալք լինէին 'ի փառաց
25 նր։ * ‖ Եւ դրունք նորա ոչ փակեին 'ի ‖ Եսայ.
տուէ և 'ի գիշերի։ այլ բաց կային հա- 60. 11.
նապազորդ։ և գիշեր ոչ եւս լինէր։
26 * ԱՆ փառք, և պատիւ ազգաց 'ի
27 նմա։ * Եւ ոչ մտցէ անդ ամ չար
կամ, և պիղծ, և ստութի, բայց միայն
որք գրեալք են 'ի դպրութե կենաց
գառինն։

Գլ: ԻԲ.

1 Եւ եցոյց ինձ զմաքուր գետ կենդանւոյ ջրոյ՝ սառնատեսակ՝ որ ելանէր յաթոռոյն Այ եւ գառինն: 2 * Եւ գնայր ընդ մէջ հրապարակաց քաղաքին. եւ զեզերբ գետոյն աստի եւ անտի ծառս կենաց՝ որք բերեին պտուղս երկոտասան. ըստ միոյ միոյ ամսոյ տային զպտուղս իւրեանց. եւ տերեւ ծառոցն էր բժշկութիւն հեթանոսաց: 3 * Եւ նզովք անդ ոչ եւս էին. եւ աթոռն Այ եւ գառինն ընդ 'ի նմա. եւ ծառայք նորա պաշտէին զնա: 4 * Եւ տեսանէին զերեսս նր՝ եւ անուն նորա գրեալ էր 'ի ճակատս նց: 5 * Եւ գիշեր ոչ էր անդ՝ եւ ոչ էին անդ պէտք ճրագի, եւ լուսոյ արեգական. վն զի Տր Այ լուսաւորէր զնս. եւ թագաւորեսցեն յաւիտեանս յաւիտենից:

6 * Եւ ասէ ցիս՝ այսք բանք հաւատարիմք են եւ ճշմարիտք: եւ Տր Այ մարգարէից սրբոց՝ առաքեաց զհրեշտակ իւր՝ ծառայից իւրում ցուցանել՝ որ լինելոց է վաղվաղակի: 7 * Ահա գամ վաղվաղակի: երանի՝ որ պահէ զբանս մարգարէութես այսորիկ: 8 * Եւ ես Յօհաննէս լուայ եւ տեսի զայս ամենայն. եւ յորժամ լուայ եւ տեսի. անկայ՝ եւ երկիր պագի հրեշտակին՝ որ ցուցանէր ինձ զայս ամ: 9 * Եւ ասէ ցիս՝ մի՛ անկաներ առաջի իմ, եւ երկիր պագաներ. քանզի եւ ես ծառայակից քո եմ, եւ եղբարց քոց†, որք պահեն զբանս մարգարէութե գրոյս այսորիկ: Այ երկիր պագ: 10 * Եւ ասէ ցիս դարձեալ. մի՛ կնքեր զբանս մարգարէական գրոյս այսորիկ. քանզի ժամանակս մերձ է:

11 * Որ ամբարշտելոցն է՝ ամբարշտեսցի. եւ որ աղտեղանալոցն է՝ աղտեղասցի. եւ որ արդարանալոցն է՝ արդարասցի. եւ որ սրբելոցն է՝ սրբեսցի: 12 * Ահա ես գամ վաղվաղակի՝ եւ վարձք իմ ընդ իս է. հատուցանել իւրաքանչիւր զգործս իւրեանց: 13 * Ես եմ ալֆայ α եւ օ ω, սկիզբն եւ կատարած. առաջին եւ վերջին: 14 * Երանելիք են՝ որք պահեն զպատուիրանս նորա. նոքա ունին զիշխանութի ուտել 'ի փայտէն կենաց՝ եւ մտանել ը դրունս քաղաքին: 15 * Այլ ելցեն արտաքս շունք՝ եւ դեղատուք՝ եւ սպանողք՝ եւ կռապաշտք. եւ ամենեքեան որք սիրեն զսուտ: 16 * Ես Յս առաքեցի զհրեշտակ իմ վկայել զայս ձեզ եկեղեցեացդ. ես եմ յարմատոյ եւ 'ի սեռէ դաւթի. եւ աստղ պայծառ առաւօտու: 17 * Եւ հոգի, եւ փեսայ՝ որ գալոցն եմ: եւ հարսունքն ասեն՝ եկ: եւ որ լսէ ասասցէ՝ թէ եկ. եւ որ ծարաւի է՝ եկեսցէ. եւ որք կամին առնուլ զջուրն կենաց ձրի: 18 * Վկայեմ ես ամենայնի՝ որ լսէ զբանս մարգարէութե գրոյս այսորիկ: թէ ոք յաւելցէ 'ի սա, յաւելցէ Այ 'ի վերայ նորա զեօթն հարուածսն գրեալս 'ի գիրս յայս: 19 * Եւ եթէ ոք պակասեցուցէ 'ի բանից մարգարէութեան գրոյս այսորիկ՝ պակասեցուցէ, եւ հանցէ Այ զբաժին նորա 'ի ծառոյն կենաց՝ եւ 'ի քաղաքէն սրբոյ՝ որ գրեալ է 'ի գիրս յայս: 20 * Ասէ՝ որ վկայեաց զայսոսիկ. գամ ես վաղվաղակի: Ամէն: Եկ Տէր Յս Քս: 21 * Շնորհք Տն մերոյ Յի Քի 'ի վերայ ամ սրբոց: Ամէն:

Եսայ. 60. 20.　Եսայ. 41. 4. եւ 44. 6.　Վեր. 1. 8. 17. եւ 21. 6.　Եսայ. 55. 1.

Վ. Ե Ր Ջ.:

Աղօթք Մանասէի. նաև գիրք երկուք. որք ընդ անուամբ Եզրասայ երրորդի և չորրորդի գրոյն պարաբերին, նոյնպէս Վուլգաւ, այսինքն, արտաքոյ շարակարգութեան գրոց կանոնականաց, զորս Տրիդենտինոյ սուրբ ժողովդոյն ընդունել, և կանոնականս գոլ վճռեաց, որոշակի եղան. զի մի՛ բնաւին անհետասցին. մանաւանդ որք յոմանց հարանց սրբոց երբեմն 'ի վկայութիւն առ բերին. և ներ ոմանց Աստուածաշնչոց լատինացւոց, այնպէս ձեռանագրաց՝ որպէս տպագրեցելոց վերագտանին։

Նա՛ աստ գտանելի է. զի 'ի սմին յիշեցեալ երրորդ եզրասն՝ որ ընդ չորրորդին արտաքոյ կանոնական գրոց դնիլ ասի՛ 'ի մեզ է առաջին եզրաս։

# ԱՂՕԹՔ ՄԱՆԱՍԷԻ ԱՐՔԱՅԻ

## ՅՈՒԴԱՅԻ, ՅՈՐԺԱՄ ԳԵՐԵԱԼ ԿԱԼԱՆԱՒՈՐԻՒՐ ԴԲԱԲԻԼՕՆ։

ՏԷՐ ԱՄԵՆԱԿԱԼ, Ած աբրահամու՝ իսահակայ՝ յակոբայ՝ և զաւակի նոցա արդարոյ։ Որ արարեր զերկինս և զերկիր՝ և զամենայն զարդ նոցա։ Որ կապեցեր զծով բանիւ հրամանի քոյ. փակեցեր զխորս, և կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով։ Որ ամենայն ինչ սարսի՝ և դողայ յերեսաց ահի զօրութեան քոյ։ Անբաւ է մեծ վայելչութեան փառաց սրբութեան քոյ. և սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց 'ի վերայ մեղաւորաց. անչափ և անքննին են ողորմութիւնք աւետեաց քոց։ Զի դու Տր՝ բարձրեալ՝ գթած, երկայնամիտ, բազումողորմ. և զղջանաս 'ի վերայ չարեաց մարդկան։ Դու Ած՝ ոչ եդեր զապաշխարութիւն վասն արդարոցն աբրահամու՝ իսահակայ՝ և յակոբայ, որք ոչ մեղան քեզ։ Այլ եդեր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս. զի մեղայ աւելի քան զաւազ ծովու. և բազմացան անօրէնութիւնք իմ։ Չեմ արժանի հայիլ՝ և տեսանել զբարձրութիւս երկնից. 'ի բազմութենէ անօրէնութեան իմոյ։ Կորացեալ եմ ես 'ի բռնութենէ կապանաց երկաթից՝ և ոչ գոյ ինձ հանգիստ։ Բարկացուցի զսրտմտութիւն՝ և զչար առաջի քո արարի. կանգնեցի զպատկեր՝ և բազմացուցի զցասումն։ Նա՛ արդ խոնարհեցուցանեմ զծունկս սրտի իմոյ. և հայցեմ 'ի քաղցրութենէ քումմէ։ Մեղայ Տր, մեղայ, և զանօրէնութիւս իմ ես ինձէն գիտեմ։ Աղաչեմ՝ և խնդրեմ 'ի քէն. թող ինձ Տր, թող ինձ. և մի՛ կորուսաներ զիս ըստ անօրէնութեան իմոյ։ Մի՛ յաւիտեան բարկանար ինձ՝ և մի՛ յիշեր զչարիսն իմ. և մի՛ պարտաւորեր զիս ընդ իջեալսն 'ի ներքոյ երկրի։ Զի դու Ած Ած ապաշխարողաց ես՝ և յիս ցո՛յց զբարերարութիւն քո. զի անարժան եմ։ * Կեցուսցես զիս ըստ բազում ողորմութեան քում. և օրհնեցից զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց։ Զքեզ Տր օրհնեն ամենայն զօրութիւնք երկնից. և քո են փառք յաւիտեանս։ Ամէն։

# ԳԻՐՔ ԵԶՐԱՍԱՅ ՉՈՐՐՈՐԴ։

Գլուխ Առաջներորդ։

1 ԳԻՐՔ ԵԶՐԱՍԱՅ մարգարէի երկրորդ՝ որդւոյ սարեի. որդւոյ ազարեի. որդւոյ հեղկեայ. որդւոյ սադանիայ. որդւոյ սադոկայ. որդւոյ աքիտոբայ։ 2 * Որդւոյ աքիայ՝ որդւոյ փենեհեսի՝ որդւոյ հեղեայ. որդւոյ ամերիայ. որդւոյ ասիէլայ. որդւոյ մարիմոթայ. որդւոյ արնայ. որդւոյ օզիայ. որդւոյ բորիթայ. որդւոյ աբիսէի. որդւոյ փենեհեսի. որդւոյ եղեազարու։ 3 * Որդւոյ ահարոնի 'ի ցեղէն ղեւեայ։ որ եղև գերեալ 'ի գաւառն մարաց 'ի թագաւորութեան արտաշեսի արքայի պարսից։ 4 * Եւ եղև բան Տն առ իս՝ ասելով։ 5 * Երթ՝ և պատմեա ժողովրդեան իմոյ զխարդախութիւս իւրեանց. և որդւոց նց զանօրէնութիւս. զորս առ իս գործեցին. զի պատմեսցեն որդւոց 6 իւրեանց. * Զանզի մեղք ծնողաց իւրեանց 'ի նոսա աճեցին. զի մոռացեալք զիս՝

զիս՝ զոհեցին աստուծոց օտարոտեաց։ 7 *Ո՞չ ապաքէն ես վերաբերի զնոսա յերկրէն եգիպտոսի, 'ի տանէ ծառայութեան. բայց նոքա դրդուեցին զիս. և զխորհուրդս իմ քամահեցին։ 8 *Իսկ դու գերծ զգէս գլխոյ քոյ. և զգետնեա՛ զամենեսեան զչարիս 'ի վերայ նոցա. քանզի ո՛չ հնազանդեցան օրինի իմոյ։ զի ժողովուրդ է անխրատ։ 9 *Մինչև ցե՞րբ տարայց նոցա՝ որոց այսքան բարերարութիւնս շարաբերի։ 10 *Զթագաւորս յոգունս վասն նոցա կործանեցի. զփարաւոն ընդ մանկանց իւրոց, և զամենայն զզօր նորա հարի։ 11 *Զամենեսեան զհեթանոսս յերեսաց նոցա կորուսի, և յարևելս գաւառաց երկուց զժողովուրդս տիւրոսի և սիդօնի ցրուեցի. և զամենեսեան զհակառակորդս նոցա սատակեցի։ 12 *Իսկ դու խօսեա՛ց առ նոսա՝ ասելով. զայսոսիկ ասէ Տէր։ 13 *Արդ յիսկ ես զձեզ ընդ ծով անցուցի. և զհրապարակս ձեզ 'ի բնէ պարսպեալս ընծայեցի. առաջնորդ ետու ձեզ զմովսէս և զահարոն քահանայ։ 14 *Զլոյս ձեզ 'ի ձեռն սեան հրոյ առաջի կացուցի. և զքանչելիս մեծամեծս արարի 'ի ձեզ. իսկ դուք մոռացայք զիս, ասէ Տէր։ 15 *Զայսոսիկ ասէ Տէր ամենակալ՝ լորամարգ ձեզ 'ի նշան եղև. և զբանակս ձեզ 'ի պաշտպանութիւն ետու՝ և անդ տրտնջեցիք։ 16 *Եւ ո՛չ հրատարակեցիք զանուն իմ՝ յաղագս կորստեան թշնամեաց ձերոց. այլ դեռ մինչև ցայժմ տրտնջէք։ 17 *Ո՞ւր են բարերարութիւնքն, զորս նախ շնորհեցի ձեզ։ ո՞չ ապաքէն յանապատին յորժամ քաղցեայք, աղաղակեցիք առ իս։ 18 *Ասելով, արդ՝ զի՞նչ գոյ մեզ՝ յանապատս այս առաջնորդեցեր սպանանել զմեզ. բարւոք էր մեզ ծառայել եգիպտացւոցն, քան մեռանիլ յանապատի աստ։ 19 *Ես վշտացայ 'ի հեծութիւնս ձեր. և ետու ձեզ զմանանայ 'ի կերակուր. զհաց հրեշտակաց կերիք։ 20 *Ո՞չ ապաքէն երբ ծարաւեցայք, զվէմն հերձի, և հեղան ջուրք 'ի յագեցումն. վասն տօթոյ տերևօք ծառոց զձեզ ծածկեցի։ 21 *Բաժանեցի ձեզ զերկիրս պարարտս. զքանանացիս՝ և զփերեզացիս. և զփղշտացիս յերեսաց ձերոց յետս ընկեցի. զի՞նչ և արարից ձեզ. ասէ Տէր։ 22 *Զայսոսիկ ասէ ամենակարող Տէր. մինչ էիք յանապատին 'ի գետոջն ամօրհացւոց ծարաւեալք՝ և հայհոյեցիք զանուն իմ։ 23 *Ո՞չ զհուր ձեզ փոխանակ հայհոյանացն ետու. այլ արկեալ զփայտ 'ի ջուրն՝ քաղցրացուցի զգետն։ 24 *Զի՞նչ քեզ արարից յակոբ. ո՛չ կամեցար հնազանդիլ յուդա՝ անդրաբերից զիս առ ազգս այլս. և տաց զանուն իմ նոցա. զի պահեսցեն զպատուիրանս իմ։ 25 *Վասնզի թողէք զիս, և ես զձեզ թողից։ 'ի խնդրելն ձեր յինէն զողորմութիւն, ո՛չ ողորմեցայց։ 26 *Յորժամ վերակոչիցէք զիս, ես ո՛չ լուայց ձեզ. զի բծաւորեցիք զձեռս ձեր արեամբ. և ոտք ձեր անյապաղք են առ 'ի ձգիլ 'ի մարդասպանութիւն։ 27 *Ո՛չ իբրու թէ զիս 'ի բաց թողէք. այլ զձեզ ինքնին, ասէ Տէր։ 28 *Այսպէս ասէ Տէր ամենակարող. ո՛չ արդեօք ես զձեզ աղաչեցի, իբրու հայր զորդիս. և իբրու մայր զդստերս. և իբրու սնուցիչ զմանկունս իւր։ 29 *Զի եղիջիք ինձ 'ի ժողովուրդ, և ես ձեզ յԱծ. և դուք ինձ յորդիս, և ես ձեզ 'ի հայր։ 30 *Այնպէս զձեզ ժողովեցի, իբրու հաւ զձագս իւր ընդ թևօք իւրովք։ իսկ այժմ զի՞նչ արարից ձեզ. 'ի բա՛ց ձգեցից զձեզ յերեսաց իմոց։ 31 *Զմատուցումն յորժամ ինձ բերիցէք, 'ի բա՛ց դարձուցից զերեսս իմ 'ի ձէնջ. զի զօրս տօնից ձերոց՝ և զամսամուտս՝ և զթլփատութիւնս 'ի բաց արարի։ 32 *Ես առաքեցի զմանկունս իմ զմարգարէս առ ձեզ. զորս առեալ կոտորեցիք. և յօշոտեցիք զմարմինս նոցա. որոց զարիւնն խնդրեցից՝ ասէ Տէր։ 33 *Այսպէս ասէ Տէր ամենակարող՝ տուն ձեր ամայացեալ է. հոսեցից զձեզ որպէս զմղեղ։ 34 *Եւ որդիք զսերականութիւն մի՛ արասցեն. քանզի զպատուիրանս իմ անդոսնեցին՝ և զորինչ չար է առաջի իմ, արարին։ 35 *Առ ձեռն տաց զտունս ձեր ժողովրդեան եկողի, որք զիս ո՛չ լուեալք հաւատան. որոց զնշանս ո՛չ ցուցի, արասցեն, զորս պատուիրեցի։ 36 *Զմարգարէս ո՛չ տեսին, և յիշեսցեն զանօրէնութիւնս նոցա։ 37 *Վկայեմ ժողովրդեան հանդերձելոյ ընդ շնորհ, որոյ մանկունք ցնծասցեն հանդերձ խնդութեամբ՝ զիս ո՛չ տեսեալ աչօք մարմնաւորօք, սակայն հոգւով հաւատասցեն՝ զորս ասացի։ 38 *Եւ այժմ, եղբայր, հայեաց՝ որպիսիք փառք, և տես զժողովուրդն եկեալ յարևելից։ 39 *Որոց տաց առաջնորդ զաբրահամ, զիսահակ, և զյակոբ. և զօսէէ, և զամօս, և զմիքիայ. և զյովէլ. և զաբդիայ. և զյօնան։ 40 *Եւ զնաւում. և զամբակում. զսոփոնիայ. զանգէէ՝ զզաքարիայ՝ և զմաղաքիայ՝ որ և հրեշտակ Տն կոչեցաւ։

## Գլ: Բ։

1 Այսպէս ասէ Տէր. ես արտահանի զժողովուրդս զայս 'ի ծառայութենէ. որոց զպատուիրանս ետու 'ի ձեռն մանկանց իմոց մարգարէից՝ որոց լսել ո՛չ կամեցան. այլ անարգեցին զխորհուրդս իմ։ 2 *Մայրն, որ ծնաւ զնոսա, ասէ ցնոսա։ գնացէք որդիք. զի ես այրի եմ և 'ի բաց թողեալ։ 3 *Սնուցի զձեզ հանդերձ խնդութեամբ. և արձակեցի զձեզ հանդերձ ողբով և տրտմութեամբ։ քանզի մեղայք առաջի Տն Այ ձերոյ. և որ ինչ չար է՝ առաջի նորա արարէք։ 4 *Իսկ այժմ զի՞նչ արարից ձեզ. ես այրի եմ 'ի բաց թողեալ։ գնացէք որդիք, և հայցեցէք 'ի Տէ ողորմութիւն։ 5 *Այլ ես, հա՛յր՝ զքեզ վկայ

կոչեմ 'ի վկայ որդւոց մօր, որք ոչ կամեցան զվկայութիւն իմ պահել։ 6 * Զի տացես նց զամօթ, և զմայր նոցա 'ի յափշտակութիւն. մի լիցի նց սերականութիւն ։ 7 * Ցրուեսցին 'ի հեթանոսս անուանք նց։ Ջնջեսցին յերկրէ, զի քամահեցին զխորհուրդ իմ։ 8 * Վայ քեզ Ասուր. որ ծածկես զանօրէնս հանդէպ քեզ։ ազգ չար յիշեա, զինչ արարի ընդ Սոդոմ և ընդ Գոմոր։ 9 * Որոց երկիր ընկողմանի ներ ձիւթեղինաց ակօսից՝ և կարկառաց մոխրոց. այսպէս տաց զնս որք ինձ ոչ լուան՝ ասէ Տր ամենակարող։ 10 * Զսոսա, ասէ Տր առ Եզրաս, պատմեա ժողովրդեան իմոյ. վնզի տաց նց զթագաւորութիւն Եէմի. զոր տալոց էի Իղի։ 11 * Եւ առից ինձ զփառս նց. և տաց նց զտաղաւարս մշտնջենաւորս, զորս պատրաստեցի նց։ 12 * Փայտ կենաց եղիցի նց 'ի հոտ իւղոյ. և ոչ աշխատեսցին, և ոչ լքցին։ 13 * Գնացէք, և առջիք. խնդրեցէք ձեզ աւուրս սակաւս. զի անմահասցին ։ Արդէն պատրաստեալ է ձեզ արքայութիւն. հսկեցէք։ 14 * Վկայ կոչեմ զերկին և զերկիր՝ զի խորտակեցի զչարն, և ածեցուցի զբարին. քանզի կեամ ես՝ ասէ Տէր ։ 15 * Մայր գգուեա զորդիս քո. սնո զնոսա հանդերձ խնդութեամբ. իբրև զսիւն հաստատեա զոտս նց. զի զքեզ ընտրեցի. ասէ Տր։ 16 * Եւ յարուցից զմեռեալս 'ի տեղեաց իւրեանց. և 'ի գերեզմանաց վերաբերից զնս. քանզի ծանուցի զանուն իմ յԻէլ։ 17 * Մի երկնչիր մայր որդւոց. քանզի զքեզ ընտրեցի. ասէ Տր։ 18 * Առաքեցից քեզ յօգնականութիւն զմանկունս իմ զԵսայիաս և զԵրեմիաս. առ որս զխորհուրդ իմ սրբ արարի. և պատրաստեցի քեզ զծառս երկոտասանս ծանրացեալս պտղօք զանազանիւք ։ 19 * Եւ նոյնքան աղբիւրս հոսօղս զկաթն և զմեղր։ և զլերինս անչափս եօթն. ունօղս զվարդ՝ և զշուշան. որովք ուրախութեամբ լցուցանիցեմ զորդիս քո ։ 20 * Զայրին արդարացո. որբոյ դատ արա. կարօտի տուր. որբոց այց արա. զմերկս զգեցո։ 21 * Զխորտակեալն և զտկարն բժշկեա. զկաղն մի այպաներ. հովանացիր անկարին. և զկոյրն առ 'ի տեսութիւն պայծառութեան իմոյ առածգեա։ 22 * Զծերն և զերիտասարդն 'ի մէջ պարսպաց պահեա ։ 23 * Զմեռեալս ուր գտանիցես, կնքեալ աւանդեա գերեզմանի. և տաց քեզ զնախկին զաթոռն 'ի յարութեան իմում։ 24 * Հանգարտեաց, և հանգիր, ժողովուրդ իմ. քանզի եկեսցէ հանգիստ քո ։ 25 * Դայեակ բարի սնո զորդիս քո. հաստատեա զոտս նոցա։ 26 * Զծառայս՝ զորս ետու քեզ՝ ոչ ոք 'ի նոցանէ սատակիցի. զի ես զնս խնդրեցից 'ի թուոյ քոյ։ 27 * Մի վհատիր՝ զի երբ եկեսցէ օր տագնապի և նեղութե, այլք ողբասցեն՝ և տրտումք եղիցին. իսկ դու բերկրեալ և փարթամ եղիցիս։ 28 * Նախանձեսցին հեթանոսք, և ոչինչ ընդդէմ քեզ կարասցեն, ասէ Տէր ։ 29 * Ձեռք իմ շոշափեսցեն զքեզ. և ոչ որդիք քո զգեհեան տեսցեն։ 30 * Ուրախացիր մայր հանդերձ որդւովք քովք. զի ես զքեզ զերծուցից՝ ասէ Տր։ 31 * Զորդիս քո զննջեցեալս յիշեա, զի ես զնս վերաբերից 'ի կողմանց երկրի։ և զողորմութիւն ընդ նոսա արարից. զի ողորմած եմ, ասէ Տր ամենակար։ 32 * Գրկեա զծնունդս քո՝ մինչև դայցեմ. և բաշխեցից նց զողորմութիւն. քանզի յորդին աղբիւրք իմ. և շնորհ իմ ոչ պակասեսցի։ 33 * Ես Եզրաս զպատուէր առի 'ի Տէ 'ի լերինն Քորէբ, զի գնացից առ Իէլ. առ որս երբ եկի, խոտեցին զիս. և թքին ընդ պատուիրանս Տն։ 34 * Վասնորիկ ձեզ ասեմ ազգք, որք լուէք, և իմանայք ։ սպասեցէք հովուին ձերոյ. զհանգիստ յարակայական տացէ ձեզ. քանզի մերձ է նա՝ որ ներ վերջնում յաւիտենի եկեսցէ։ 35 * Պատրաստք լերուք առ վարձս թագաւորութեն։ վնզի լոյսն մշտնջենաւոր լուսաւորեսցէ զձեզ 'ի ձեռն յարակայականի ժամանակի։ 36 * Փախուցէք զստուերս յաւիտենի այսորիկ. առէք զանուշութի փառաց ձերոց. ես վկայեմ յայտնի կեցուցչին իմոյ։ 37 * Զաւանդեալ զպարգևն առէք. և զուարճացարուք գոհանալով զնմանէ, որ զձեզ 'ի թագաւորութիս երկնայինս կոչեաց։ 38 * Արիք, և յոտն կացէք. և տեսէք զթիւ կնքեցելոցն 'ի խրախութե Տն։ 39 * Ովք զինքեանս 'ի ստուերէ յաւիտենիս արտաքերին. զպատմուճանս պայծառս 'ի Տէ ընկալան։ 40 * Առ երընկալ՝ սիոն, զթիւ քո՝ և շարակցեա զպայծառացեալս քո, որք զօրէնս Տն կատարեցին։ 41 * Որդւոց քոց՝ որոց ըղձայիր՝ լի է թիւ։ աղաչեա զհրաման Տն. զի սրբագործեսցի ժողովուրդ քո, որ կոչեցաւ 'ի բնէ ։ 42 * Ես Եզրաս տեսի 'ի լերինն սիոնի զամբոխ մեծ. զոր համարել ոչ կարացի. և ամենեքեան երգօք շարադրվէին զՏր։ 43 * Եւ 'ի միջի նոցա էր երիտասարդ մի հասակաւ բարձր. ազնուագոյն քան զնոսա զամենեսեան. և իւրաքանչիւրոց նց գլխոց դնէր զպսակս. և առաւել կաքաւէր։ բայց ես զարմանալեաւ ըմբռնեի։ 44 * Յայնժամ հարցի զհրեշտակն՝ և ասացի։ ովք են այսոքիկ, Տէր ։ 45 * Որ պատասխանեալ ասաց ինձ։ սոքա են, որք զմահացու զպատմուճան 'ի բաց եդին. և զանմահն առին։ և խոստովանեցան զանուն Այ ։ այժմ պսակին, և առնուն զարմաւենիս ։ 46 * Եւ ասացի հրեշտակին. այն երիտասարդն ով է, որ նոցա զպսակս դնէ. և զարմաւենիս 'ի ձեռս նոցա տայ։ 47 * Եւ պատասխանեալ ասաց ինձ. սա է որդին Այ. զոր յաւիտեան խոստովանեցան։ իսկ ես մեծացուցանել զնոսա ձեռնարկի, որք հզօրաբար վասն անուան Տն կացին ։ 48 * Յայնժամ

ասաց

ասաց ինձ հրեշտակն. Երթ՝ և պատմեա՛ ժողովրդեան իմոյ, որպիսիս և որքանս սքանչելիս Տն Այ տեսեր:

## Գլ. Գ.

1 Յամին երեսներորդի կործանման քաղաքին էի 'ի բաբելոն. և ամբոխեցայ յանկողնոջ իմում բազմեալ. և խորհուրդք իմ ելանէին 'ի վեր քան զսիրտ իմ: 2 *Վասն զի տեսի զաւերութիւն սիոնի. և զլիութիւն նոցա, որք բնակէին 'ի բաբելոն: 3 *Եւ հողմառեցաւ հոգի իմ յոյժ. և սկսայ խօսիլ առ բարձրեալն բանս երկիւղալիս: 4 *Եւ ասացի, ո՜վ իշխող Տր՝ դու ասացեր 'ի բնէ. յորժամ տնկեցեր զերկիր. և այս միայն. և հրամայեցեր ժողովրդեան: 5 *Եւ ետուր ադամայ զմարմին մահացու. այլև նա հաստուած ձեռաց քոց էր. և ներաշնչեցեր 'ի նա զհոգի կենդանի. և եղև կենդանի առաջի քո: 6 *Եւ ներածեր զնա 'ի դրախտն, զոր տնկեաց աջ քո, նախ քան զերկիր առ գալն: 7 *Եւ սմին պատուիրեցեր սիրել զճանապարհս քո. զորով և եանց, և փութով կացուցեր 'ի նմա զմահ՝ և ներ ծննդոց նր. և ծնան ազգք՝ և ցեղք՝ և ժողովուրդք՝ և տոհմք, որոց ոչ գոյ թիւ: 8 *Եւ ընթացաւ իւրաքանչիւրոք ազգ ըստ կամաց իւրոց. և հիմնալիս առնէին առաջի քո. և արհամարհէին զպատուիրանս քո: 9 *Սակայն դարձեալ 'ի ժամանակի ներածեր զհեղեղն 'ի վր բնակողաց աշխարհի. և կորուսեր զնս. 10 *Եւ եղև ներ իւրաքանչիւրում նոցա՝ ոմն ադամայ մեռանիլ. այսպէս սոցա հեղեղ: 11 *Բայց թողեր զմի 'ի սոցանէ զնոյ համդերձ տամբ իւրով. և յայնմանէ արդարոյ զամենեսեան: 12 *Եւ եղև իբրև սկսան բազմանալ. ոյք բնակէին 'ի վր երկրի. և բազմապատկեցուցին զորդիս և զժողովուրդս, և զազգս բազումս. և սկսան կրկին անգամ զանդթութիւն առնել առաւել քան զնախնիս: 13 *Եւ եղև՝ իբրև զանիրաւութիւն առնէին առաջի քո, ընտրեցեր քեզ զայր 'ի սոցանէ՝ որոյ անունն էր աբրահամ: 14 *Եւ սիրեցեր զնա, և ցուցեր նմա միայնոյ զկամս քո: 15 *Եւ հաստատեցեր նմա ուխտ յաւիտենական. և ասացեր նմա՝ զի ոչ երբեք թողցես զզաւակ նորա: և ետուր նմա զիսահակ. և իսահակայ ետուր զյակոբ, և զեսաւ: 16 *Եւ զատեցեր քեզ զյակոբ. իսկ զեսաւ որոշեցեր: և եղև յակոբ 'ի բազմութիւն մեծ: 17 *Եւ եղև՝ իբրև արտաբերեր զզաւակ նր յեգիպտոսէ. առաջնորդեցեր 'ի վր լերինն սինայի: 18 *Եւ խոնարհեցուցեր զերկինս, և կացուցեր զերկիր. և շարժեցեր զանդունդս. և դողացուցեր զխորս. և վրդովեցեր զկենցաղս: 19 *Եւ անցին փառք քո 'ի դրունս չորս հուր, և երկրաշարժութիւն, և հողմ, և սառն. զի տացես զաւակի յակոբայ զօրէն: և ցեղին իլի զուշադրութի: 20 *Եւ ոչ 'ի բաց բարձեր 'ի նոցանէ զսիրտ չարաբարոյ, զի առնիցէր օրէն քո 'ի նոսա զպտուղ: 21 *Զի զսիրտ չարայոյզ 'ի յուս բարձեալ առաջինն ադամ, արտանցեալ յաղթեցաւ. այլև ամենեքեան որք 'ի նմանէ ծնեալք են: 22 *Եւ եղև նեղացեալ հիւանդութիւն, և օրէն ընդ սրտի ժողովրդեանն, համդերձ չարաբարոյութեամբ արմատոյն. և եանց որինչ բարի է՝ և մնաց չարաբարոյութիւն: 23 *Եւ անցեալք գնացին ժամանակք, և վերջացան ամք. և յարուցեր քեզ զծառայ անուամբ դաւիթ: 24 *Եւ ասացեր նմա շինել զքաղաք անուան քոյ. և մատուցանել քեզ ներ նոյնում զխունկ՝ և զմատուցմունս: 25 *Եւ եղև այս յամս յոլովս. և զանցարարէին՝ որք բնակէին 'ի քաղաքին: 26 *Եւ ամենեցուն արարեալք ոմն արար ադամ. և ամենեքեան ծնունդք նորա. զի վարէին և նոքա սրտիւ չարաբարոյիւ: 27 *Եւ մատնեցեր զքաղաք քո 'ի ձեռս թշնամեաց քոց: 28 *Միթէ զբարեգործս արարին, որք բնակին 'ի բաբելոն. և վն այնորիկ տիրեաց սիոնի: 29 *Եղև իբրև եկի աստ՝ և տեսի զանագործութիս, որոց ոչ գոյ թիւ: և զյանցաւորս յոլովս ետես անձն իմ նայսմ երեսներորդում ամի. և զարմացաւ սիրտ իմ: 30 *Վասն զի տեսի թէ զիարդ տևես մեղանաց նոցա. և խնայեցեր ամբարշտաբար գործողացն: և կորուսեր զժողովուրդ քո. և պահեցեր զթշնամիս քո. և ոչ նշանակեցեր: 31 *Ոչինչ յիշեցի՝ զի արդ պարտէր թողանիլ ճանապարհս այս. միթէ զբարեգոյնս արար բաբելոն քան զսիոն: 32 *Կամ այլ ազգ ծանեաւ զքեզ բաց 'ի իլէ: կամ ոյք ցեղք հաւատացին կտակարանաց քոց՝ որպէս յակոբ: 33 *Որոց վարձ ոչ երևեցաւ. և ոչ վաստակն պտղաբերեաց: զի արտադնալով արտադնացի առ ազգս. և տեսի զնս ուռճացեալս, և ոչ յիշատակօղս պատուիրանաց քոց: 34 *Արդ այժմ կշռեա՛ 'ի մէջ զանօրէնութիս մերայինս, և զնոցայն՝ որք բնակին յաշխարհի: և ոչ գտանի անուն քո, եթէ ոչ 'ի մէջ իլի: 35 *Կամ երբ ոչ մեղան առաջի քո, ոյք բնակին յերկրի. կամ ո՞ր ազգ այնպէս պահեաց զպատուիրանս քոյայինս: 36 *Զսոսա թերևս գտանիցես յանուանէ պահեալս զօլ զպատուիրանս քոյայինս. իսկ զհեթանոսս ոչ գտանիցես:

## Գլ. Դ.

1 Եւ պատասխանեաց առ իս հրեշտակն, որ առաքեցաւ առ իս. որոյ անունն էր ուրիէլ: 2 *Որ և ասաց ինձ, զարմանալով զարմացաւ սիրտ քո նայսմ աշխարհում, և համբերմբռնել խոկաս զճանապարհս բարձրելոյն: 3 *Եւ ասացի, այդպէս Տր իմ: և պա-

պատասխանեաց ինձ, և ասաց ։ զերիս ճա_
նապարհս առաքեցայ ցուցանել քեզ. և զե_
րիս նմանութիւնս առաջի դնել քեզ ։ * Յա_ 4
ղագս որոց ինձ թէ մեկնեսցես զմի
'ի նոցանէ, ես և ես քեզ բացերևեցուցից
զճանապարհն, զոր բաղձաս տեսանել. և
ուսուցից զքեզ՝ ուստի լինի սիրտ չարաբա_
րոյ ։ * Եւ ասացի, խօսեաց Տր իմ ։ և ասաց 5
առ իս ։ գնա, կշռեա ինձ զկշիռ հրոյ ։ կամ
չափեա ինձ զփչումն հողմոյ ։ կամ մերակո_
չեա ինձ զօր, որ էանց ։ * Եւ պատասխա_ 6
նեցի, և ասացի. ո՞վ ոք ծնեցելոց կարիցէ
առնել. զի զիս հարցանես սակս սոցա ։
* Եւ ասաց առ իս, եթէ իցեմ հարցանօղ 7
ցքեզ՝ ասելով ։ Որքանք են բնակութիւնք 'ի
սրտոջ ծովու. կամ որքանք երակք են ներ
սկզբան անդնդոց. կամ որքանք երակք են
'ի վր հաստատութէ ։ կամ ո՞յք են ելք դրախ_
տին ։ * Ասասցես ինձ թերևս ։ յանդունդն 8
ոչ իջի՝ որ և ոչ 'ի դժոխս դեռևս. որ և ոչ
յերկինս երբեք ելի ։ * Իսկ այժմ ոչ հարցի 9
զքեզ՝ եթէ ոչ սակս հրոյ. և հողմոյ՝ և աւ_
ուր. ընդ որ անցեր. և յորոց տրոհիլ ոչ կա_
րես. և ոչ պատասխանեցեր ինձ յաղագս
սոցա ։ * Եւ ասէ ինձ, դու, ո՞յք քո՞յք են ը̃ 10
քեզ համահասակք՝ ոչ կարես ճանաչել ։
* Եւ զիա՞րդ կարէ անօթ քո պարփակել 11
զճանապարհս բարձրելոյն ։ և արդէն ար_
տաքին ապականեցելոյ աշխարհի՝ իմանալ
զապականութիւն զպարզ տեսեալն յերեսաց
իմոց ։ * Եւ ասացի նմա. բարւոք էր մեզ 12
ոչ գոլ. քան դեռևս կելով կեալ ներ անա
գործութեանց՝ և կրել. և ոչ իմանալ սակս
որոյ իրի ։ * Որ և պատասխանեաց առ իս՝ և 13
ասաց. գնալով գնացի յանտառն փայտից
դաշտի. և խորհեցան զխորհուրդ ։ * Եւ ա_ 14
սացին. եկայք, և գնասցուք, և արասցուք
ընդ ծովու զպատերազմ. զի յետս դարձցի
յերեսաց մերոց. և արասցուք մեզ զան_
տառս զայլս ։ * Եւ նմանապէս ալիք ծո_ 15
վու՝ և նոքա խորհեցան զխորհուրդ՝ և ասա_
ցին. եկայք, ելեալք պատերազմիցուք ընդ
անտառս դաշտի. զի և անդ շինեսցուք մեզ
ինքեանց զայլ իմն զգաւառ ։ * Եւ եղև խոր_ 16
հեցեալն անտառին ընդունայն. զի եկն
հուր, և սպառեաց զնա ։ * Նմանապէս և 17
խորհեցեալն ալեաց ծովու. զի եկաց ցա_
մաքն. և արգել զնա ։ * Զի թէ իցես դա_ 18
տաւոր սոցա, զո՞րն ձեռն արկանիցես ար_
դարացուցանել. կամ զո՞րն դատապարտել ։
* Եւ պատասխանեցի, և ասացի. երկա_ 19
քանչիւրքն զխորհուրդ զունայն խորհեցան.
զի երկիր տուեալ է անտառի. և ծովու տե_
ղի բառնալ զալիս իւր ։ * Եւ պատասխա_ 20
նեաց առ իս՝ և ասաց ։ բարւոք դու դատե_
ցեր. և ընդէ՞ր ոչ դատեցեր զքեզ ինքնին ։
* Զի որպ̃ երկիր անտառի տուեալ է. և ծով 21
ալեաց իւրոց ։ այսպէս ո՞յք 'ի վերայ երկրի
բնակիմսն, զայնս միայն որք են 'ի վր երկրի
իմանալ կարեն. և ո՞յք 'ի վերոյ երկնից՝
զայնս որք 'ի վերոյ բարձրութէ երկնից ։
22 * Եւ պատասխանեցի՝ և ասացի. աղերսեմ
առ քեզ Տր, զի ինձ տացի զգացումն իմա_
23 նալոյ ։ * Զի ոչ կամեցայ հարցանել սակս
վերնագունիցն քոց. այլ սակս այսոցիկ՝ որք
ընդ անցանեն զմեօք զօրհանապազ ։ վասն
ո՞յր Իէլ տուեալ 'ի նախատինս հեթանո_
սաց. զոր սիրեցեր զժողովուրդ, տուեալ է
ցեղից անդթոց ։ և օրէն հարցն մերոց 'ի
ստորասուզումն առ բերեալ է. և տրամա_
24 դրութիւնք գրեցելոց ոչ ուրեք գոն ։ * Եւ
զանց արարաք զյաւիտենիւ, իբրև զմա_
րախ, և կեանք մեր ընդարմացումն, և սոս_
կումն ։ և ոչ եմք արժանաւորք ողորմու_
25 թեան հասանիլ ։ * Այլ զի՞նչ արասցէ
անուան իւրոյ՝ որ կոչեցեալ է 'ի վերայ մեր ։
26 և սակս այսոցիկ հարցի ։ * Եւ պատասխա_
նեաց առ իս՝ և ասաց ։ թէ իցես բազմա_
զննին. յաճախապէս սքանչանայցես. քան_
զի փութալով փութայ կենցաղս առան_
27 ցանել ։ * Եւ ոչ պարփակէ բառնալ՝ որք
ներ հանդերձելոց ժամանակաց արդարոց
խոստացեալք են ։ քանզի լի անիրաւութե̃
է կենցաղս այս՝ և անհաստատութե̃ք ։
28 * Իսկ սակս որոց հարցանես, ասացից. զի
սերմանեալ է չարութի̃. և դեռևս ոչ եկն
29 աւերութի̃ իւր ։ * Ապա թէ ոչ անդրա_
դարձցի որ սերմանեցաւ, և անցցէ տեղին,
ուր սերմանեցաւ չարութի̃, ոչ եկեսցէ,
30 ուր սերմանեցաւ բարութի̃ ։ * Զի հատ
սերման չարի սերմանեցաւ ներ սրտոջ Ադա_
մայ 'ի բնէ. և որքան անդթութէ բուսոյց
մինչև ցայժմ ։ և բուսուցանէ մինչև եկես_
31 ցէ կալ ։ * Բայց համարեա՛ց առ քեզ զսեզ
սերման չարի. որքան զպտուղ անդթութե̃
32 սերեաց ։ * Յորժամ միջատեալք եղիցին
հասկք, որոց ոչ գոյ թիւ. որքան զկալ մեծ
33 ձեռնարկցեն առնել ։ * Պատասխանեցի,
և ասացի ։ զիա՞րդ, և ե՞րբ այդ ։ Ընդէ՞ր
34 կարճք, և չարք, ամք մեր ։ * Եւ պատաս_
խանեաց առ իս՝ և ասաց ինձ. մի՛ աճապա_
րեսցես դու 'ի վր բարձրելոյն ։ քանզի դու
աճապարես ինանիր դու 'ի վր նր. զի զար_
35 մացումն քո բազում ։ * Ոչ ապաքէն յա_
ղագս սոցա հարցին անձինք արդարոց ներ
շտեմարանաց իւրեանց, ասացեալք ։ մինչև
ցե՞րբ յուսամ այսպ̃. և ե՞րբ գայցէ պտուղ
36 կալոյ վարձու մերոյ ։ * Եւ պատասխանեաց
առ այսոսիկ Յերեմիէլ հրեշտակապետն, և
ասաց ։ երբ լցեալ լիցի թիւ սերմանցն
'ի ձեզ ։ քանզի կշռորդիւ կշռեաց զկեն_
37 ցաղս ։ * Եւ չափու չափեաց զժամանակս.
և թուով թուեաց զամանակս. և ոչ ամբո_
խեաց՝ և ոչ փութացոյց մինչև լնանիցին
38 նախասացեալք չափքն ։ * Եւ պատասխա_
նեցի, և ասացի. ո՛վ իշխօղ Տր. նաև մեք
ամե_

ամենեքեան լիք եմք անգթութեամբ ։ *Եւ մի՛ 39 գուցէ վասն մեր ոչ ընանիցին արդարոցն կալք, վասն մեղաց ներաբնակողաց 'ի վերայ երկրի ։ *Եւ պատասխանեաց առ իս՝ և 40 ասաց ։ երթ, և հա՛րց զյղին, թէ երբ լցուս ցէ զինն զամիսս իւր ․ թերևս կարիցէ սաղ մաւումն նորա ներափակել զերկն ներ ինքեանս ։ *Եւ ասացի, ոչ կարէ Տէր ։ և ասաց առ իս․ 41 ներ դժոխոց շտեմարանք հոգւոց սաղմաւ մանն համեմատեալք են ։ *Զի որպէս նա 42 աձապարէ, որ երկնէ, փախչել 'ի հարկաւո րութենէ երկանն ։ այսպէս և սա աձապարէ հատուցանել զայնոսիկ, որք աւանդեալք են ։ *'Ի ընէ քեզ ապացուցցի սակս այսո_ 43 ցիկ՝ զորս ցանկաս տեսանել ։ *Եւ պատաս 44 խանեցի, և ասացի ․ եթէ գտի շնորհ առա_ ջի աչաց քոց ․ և թէ կարելի է, և թէ պատ_ կանաւոր եմ, *Ցո՛յց ինձ, թէ յաւէտ ա_ 45 ռաւել անցեալ է՝ ունի գալ ․ կամ յոլովա_ գոյն արտագնացին 'ի վերայ որոյ հանդեր_ ձեալ է ։ *Որինչ անցեալ գնաց, գիտեմ ․ 46 բայց որինչ ապառնի է, ոչ գիտանամ ։

*Եւ ասաց ցիս ։ կա՛ց 'ի վերայ աջակողմանն, և 47 ցուցից քեզ զմեկնութիւն համեմատութեանն ։ *Եւ կացի, և տեսի ․ և ահա փուռն բոր_ 48 բոքեալ էանց առաջի իմ ․ և եղև, իբրև անցանէր բոցն ․ տեսի, և ահա վերացաւ ծուխն ։ *Զկնի այսորիկ էանց առաջի իմ 49 ամպ լի ջրով ․ և էարկ զանձրև բազում յորդութեամբ, և իբրև էանց արձակումն անձ_ րևոյն, վերաեկին ներ այնմ կաթիլք ։ *Եւ ասաց առ իս՝ խորհեա՛ց 'ի քեզ ․ որպէս 50 աձեաց անձրևն առաւել քան զկաթիլսն ․ և հուրն քան զծուխն ․ այսպէս գերայոր_ դեցաւ՝ որ էանց քան զչափն ։ Բայց յաղ_ թեցին կաթիլքն, և ծուխն ։ *Եւ աղօ_ 51 թեցի, և ասացի ։ կարծես, կեա՞մ մինչև յաւուրսն յայնոսիկ ․ կամ զի՞նչ եղիցի յաւուրսն յայնոսիկ ։ *Պատասխանեաց առ 52 իս, և ասաց ։ սակս նշանացն՝ յաղագս որոց զիս հարցանես, 'ի մասնէ կարեմ քեզ ա_ սել ․ բայց վասն կենաց քոց ոչ առաքե_ ցայ ասել քեզ՝ այլև ոչ գիտեմ ։

## ԳԼ ։ Ե ։

Սակայն վասն նշանացն, ահա աւուրք 1 եկեսցեն, ներ որոց յափշտակեսցին, որք բնակին յերկրի 'ի հարկոջ յոլովում, և թաք չիցի ճշմարտութեան ճանապարհ ․ և ամուլ եղիցի 'ի հաւատոյ գաւառ ։ *Եւ բազմա_ 2 պատկեսցի անիրաւութիւն 'ի վերայ այսորիկ, զոր ինքնին դու տեսանես ։ և 'ի վերայ որոյ լուար 'ի վաղուց ։ *Եւ եղիցի վերաեդե_ 3 ցելոյ հետոյն՝ զոր այժմ տեսանես թագաւ որել գաւառի, և տեսցեն զնա ամայացեալ ։ *Բայց եթէ քեզ տացէ բարձրեալն կեալ՝ 4 տեսցես զկնի երրորդի փողոյն ․ և վերա_ լուսասցի յանկարծակի արեգակն գիշե_ 5 րին ․ և լուսինն երիցս 'ի տունջեան ։ *Եւ 'ի փայտէն արիւն կաթեսցէ, և քար տացէ զձայն իւր ․ և ժողովուրդք վրդովեսցին ։ 6 *Եւ թագաւորեսցէ, որոյ ոչ ակնունին, որք բնակին 'ի վերայ երկրի ։ և թռչունք զտե 7 ղափոխութիւն արասցեն ։ *Եւ ծովն սոդո_ մացւոց զձկունս յետս ձգեսցէ, և տացէ զձայն գիշերին ․ զոր ոչ ճանաչիցեն բա_ զումք ․ բայց ամենեքեան լուիցեն զձայն նորա ։ 8 *Եւ վիհ լիցի 'ի տեղիս բազումս ։ և հուր յաճախապէս վերաթողցի ․ և գազանք վայրենիք երկրաւորարեսցին ․ և կանայք դաշտանեկանք ծնանիցին զցուցանքաւորս ։ 9 *Եւ ներ քաղցունց ջրոց աղտաղտուկք գտանիցին ։ և բարեկամք ամենքին ինքեանք ընդ ինքեանս պատերազմեսցին ․ և թաք_ չիցի յայնժամ զգացումն ․ և իմացումն տրո 10 հեսցի ներ շտեմարանաց իւրոց ։ *Եւ յու_ զեսցի 'ի բազմաց, և ոչ գտանիցի ․ և բազ մապատկեսցի անիրաւութիւն ․ և անժուժ_ 11 կալութիւն 'ի վերայ երկրի ։ *Եւ հարցցէ գաւ առ զմերձակայս իւր, և ասասցէ ․ մի՛ ար_ դեօք զքև անցեալ գնաց արդարութիւն ար_ 12 դարագործն ։ և սա ուրասցի ։ *Եւ եղիցի այնու ժամանակաւ, և յուսասցին 'ի մար_ դիկք, և ոչ կալնուցուն ․ աշխատեսցին, և ոչ յաջողեսցին ճանապարհք նոցա ։

13 *Զնշանս զայսոսիկ ասել քեզ թոյլտուեալ եղև ինձ ․ և թէ աղօթեսցես վերստին, և լայցես ․ որպէս և այժմ, և պահեսցես եօթ_ նեակս, լուիցես կրկին մեծագոյնս քան զսոսա ։

14 *Եւ զարթեայ, և մարմին իմ սոսկացաւ յոյժ ․ և հոգի իմ աշխատեցաւ՝ զի պակա_ 15 սեսցի ։ *Եւ կալաւ զիս՝ որ եկն հրեշտակ ․ որ և խօսէր ընդ իս ․ և զօրացոյց զիս ․ և կա_ 16 ցոյց զիս 'ի վերայ ոտից ։ *Եւ եղև ներ գի_ շերոջն երկրորդում ․ և եկն առ իս սաղա_ թիէլ դուքս ժողովրդեանն ․ և ասաց ինձ ։ ուր էիր ․ և վասն է՞ր է դէմ քո տրտում ։ 17 *Եւ ոչ գիտես, զի քեզ հաւատացեալ է իսրայէլ ներկրում արտասահմանութեան իւրեանց ։ 18 *Արդ՝ արի՛, և ճաշակեա՛ զհաց ․ և մի՛ թող ցես զմեզ՝ որպէս հովիւ զհօտ իւր 'ի ձեռս 19 գայլոց չարաբարոյից ։ *Եւ ասացի նմա ․ գնա՛ յինէն ․ և մի՛ մերձեսցիս առ իս ․ և լուա՝ զի ասացի, և 'ի բաց եկաց յինէն ։

20 *Եւ ես պահեցի զաւուրս եօթն, ողբալով և լալով ․ որպէս ինձ պատուիրեաց ուրիէլ 21 հրեշտակն ։ *Եւ եղև յետ աւուրց եօթանց ․ և դարձեալ խորհուրդք սրտի իմոյ թախան 22 ձեցին զիս կարի ։ *Եւ վերընկալան միտք իմ զհոգի իմացման ։ և վերստին սկսայ խօ_ 23 սիլ առաջի բարձրելոյն զխօսս ։ *Եւ ասա_ ցի ։ իշխօղ Տէր ․ յամենայն անտառէ երկրի ․ և յամենայն ծառոց նորա ընտրեցեր զայգի 24 միայնակ ։ *Եւ յամենայն երկրէ ոլորտի, ընտ_ րեցեր քեզ զտաղաւար մի ։ և յամենայն ծաղկանց տիեզերաց, ընտրեցեր քեզ զշու_ շան

շան մի։ 25 *Եւ յամենայն խորոց ծովու, լցուցեր քեզ զառու մի։ եւ յամենայն շինեցելոց քաղաքաց, սրբագործեցեր քեզ ինքեան զսիոն։ 26 *Եւ յամենեցունց ստեղծեցելոց թռչնոց անուանեցեր քեզ զաղաւնի մի. եւ յամենեցունց հաստեցելոց խաշանց, նախանկատեցեր քեզ զոչխար մի։ 27 *Եւ յամենեցունց բազմապատկեցելոց ժողովրդոց ստացար քեզ զժողովուրդ մի. եւ յամենայն զփորձեցեալ օրէնն՝ պարգեւեցեր սմա. որոյ բաղձացար ժողովրդեան։ 28 *Եւ արդ Տր, զիարդ մատնեցեր զմինն բազմաց. եւ նախապատրաստեցեր ՚ի վերայ միոյ արմատոյ զայլս. եւ ցրուեցեր զմիայնակն քո ՚ի բազումս։ 29 *Եւ կոխեցին զնա, որք ներհակս առէին խոստմանց քոց. որք եւ կտակարանաց քոց ոչ հաւատային։ 30 *Եւ եթէ ատելով ատեցեր զժողովուրդ քո, քոյովք ձեռօք պարտ է պատժել։ 31 *Եւ եղեւ իբրեւ խօսեցայ զխօսս. եւ առաքեցաւ հրեշտակն առ իս. որ յառաջ եկն առ իս յանցեալ գիշերն։ 32 *Եւ ասաց ինձ. լուր ինձ, եւ յայտնեցից քեզ. անսա ինձ. եւ առարկանեմ առաջի քո։ 33 *Եւ ասացի, խօսեաց Տէր իմ։ եւ ասաց ցիս. կարի դու ամբոխեալ միտք եղեր վն Իլի. թերեւս առաւել սիրեցեր զնա, քան որ զնա արար։ 34 *Եւ ասացի առ նա, ոչ Տր, այլ վշտագնեալ խօսեցայ. զի ներքին զիս երիկամունք իմ ՚ի ձեռն ամի ժամու, խնդրելով ՚ի բուռն ածել զշաւիղ բարձրելոյն, եւ հետազօտել զմասն դատաստանի նր։ 35 *Եւ ասաց առ իս. ոչ կարես։ եւ ասացի, ընդէր Տր, առ ինչ ծնանեի, կամ ընդէր ոչ լինիւր արգանդ մօր իմոյ ինձ գերեզման։ զի մի տեսանիցեմ զվաստակ յակոբու։ եւ զլքումն ազգի Իլի։ 36 *Եւ ասաց ցիս, համարեա ինձ, որք դեռեւս ոչ եկին. եւ հաւաքեա ինձ զկաթիլս ցրուեալս. եւ վերստեղծեա ինձ զծաղիկս ցամաքեալս։ 37 *Եւ բաց ինձ զփակեալս զշտեմարանս։ եւ արտածեա ինձ զներափակեալս ՚ներ նոցա զշունչս։ նշանակեա ինձ զկերպարանս ձայնի, եւ յայն ժամ ցուցից քեզ զաշխատանս, զորս աղաչես տեսանել։ 38 *Եւ ասացի, տէրող Տր։ զի ով է, որ կարէ զայսոսիկ տեսանել՝ եթէ ոչ որ ընդ մարդկան զբնակութի ոչ ունի։ 39 *Իսկ ես անիմաստ, եւ զիարդ կարացից ասել սակս այսոցիկ՝ զորս յինէն հարցեր։ 40 *Եւ ասաց առ իս, զի որպ ոչ կարես առնել զմին ՚ի սոցանէ՝ որք ասացան, այսպէս ոչ կարես գտանել զդատաստան իմ. կամ ներ վերջնում զսէրն՝ զոր ժողովրդեանս խոստացայ։ 41 *Եւ ասացի, արդ ահաւասիկ Տր՝ դու մերձ ես սոցա՝ որք ՚ի վերջն են. եւ զինչ արասցեն, որք յառաջ քան զիս եղեն. կամ մեք. կամ նոքա որք զկնի մեր։ 42 *Եւ ասաց առ իս, պսակի նմանեցուցից զդատաստան իմ. որպէս ոչ յետնադունիցն յամեցումն, 43 այսպէս եւ ոչ առաջնոյն արագութի։ *Եւ պատասխանեցի, եւ ասացի։ եւ ոչ կարացես առնել զայնոսիկ՝ որք արարան. եւ որք են, եւ որք լինելոց են, ՚ի մի. զի փութանակի 44 զդատաստան քո ցուցցես։ *Եւ պատասխանեաց առ իս, եւ ասաց։ ոչ կարես փութացուցանել զարարած ՚ի վր արարչին. եւ ոչ տեւել կենդանիս այնոցիկ՝ որք նինքեան 45 ստեղծանելիք են, ներ միում։ *Եւ ասացի, որով կերպիւ ասացեր ծառայի քոյ. քանզի կենդագործելով կենագործեցեր ՚ի քէն զստեղծեալն զստեղծուածս ՚ի մի. եւ տեւէր ստեղծուածն, կարիցէ եւ այժմու- 46 նիլ զարդենիս ՚ի մի։ *Եւ ասաց առ իս։ հարց զարգանդ կնոջ. եւ ասասցես առ այն, եթէ ծնանիս, ընդէր ՚ի ձեռն ժամանակի. արդ աղաչեա զնա։ զի տացէ զտասն ՚ի մի։ 47 *Եւ ասացի, արդարեւ ոչ կարիցէ՝ այլ ըստ 48 ժամանակի։ *Եւ ասաց առ իս. եւ ես եւս զաղմառութի երկրի տուքս, որք սերմանեալք են ՚ի վերայ նր ՚ի ձեռն ժամանակի։ 49 *Զի որպ երեխայն ոչ ծնանի զնոսա, որք են ծերք. այսպէս ես տրամադրեցի յինէն 50 զստեղծեալ յաւիտեանս։ *Եւ հարցի, եւ ասացի, երբ այժմէն տացես ինձ զճանապարհ, խօսեցայց առաջի քո։ զի մայր մեր՝ սակս որոյ ասացեր ինձ, դեռեւս երիտա- 51 սարդ է՝ արդ ծերութե մերձենայ։ *Եւ պատասխանեաց առ իս՝ եւ ասաց. հարց նմա, 52 որ ծնանի, եւ ասիցէ քեզ։ *Զի ասասցես նմա. վն էր զոր ծնար այժմ՝ ոչ են նմանք այնոցիկ՝ որք նախ քան զքեզ՝ այլ փոքրա- 53 գոյնք հասակաւ։ *Եւ ասասցէ քեզ ինքնին ոմանք են, որք յերիտասարդութե արութե ծնան՝ եւ ոմանք որք ընթ ժամանակի ծերութեան պակասեալ սաղմնաւորութե 54 ծնեալք են։ *Արդ՝ զգացիր եւ դու. քանզի փոքրագունիւ հասակաւ էիք քան զնոսա 55 որք նախ քան զձեզ։ *Եւ որք զկնի ձեր, փոքրագունիւ քան զձեզ՝ իբրու նորդեանս ծերացեալք ստեղծուածք. եւ զօրութե երիտասարդութե առանցեալք։ եւ ասացի, աղաչեմ Տր՝ թէ գտի զշնորհ առաջի աչաց քոց, ցոյց ծառայի քոյ. ՚ի ձեռն որոյ այց առնես ստեղծուածոյ քոյ։

## Գլ. Զ.

1 Եւ ասաց առ իս, ՚ի սկզբան երկրայնոյ ոլորտի, եւ նախ քան զկայանալ ընթացից կենդաղոյս. եւ նախ քան զշնչել շարժակութե հողմոց։ եւ յառաջ քան զհնչումն ձայ- 2 նից որոտմանց։ *Եւ նախ քան զփայլել ճառագայթից փայլատակմանց. եւ յառաջ քան զշարահաստատել հիմանց դրախտին։ 3 *Եւ նախ քան զտեսանել գեղոյ ծաղկանց. եւ յառաջ քան զկայանալ շարժելոյ զօրութեան, եւ նախ քան զհաւաքել անհամարից 4 զինուորութեց հրեշտակաց։ *Եւ յառաջ

քան

քան զլերամբառնալ բարձրութեանց օդոյ. և նախ քան զանուանել չափու հաստատութեանց: և յառաջ քան զտապանալ հնոցի 'ի սիոն: 5 * Եւ նախքան զհետազօտել ներկայականաց ամաց: և յառաջ քան զօտարանալ գիւտից նց, որք այժմ մեղանչեն. և կնքեցան, որք զհաւատս գանձեցին: 6 * Յայնժամ մտածեցի, և եղեն ինև միայնով, և ոչ 'ի ձեռն այլոյ. և կատարած 'ի ձեռն իմ, և ոչ 'ի ձեռն այլոյ: 7 * Եւ պատասխանեցի՝ և ասացի. ո՞վ ոք եղիցի որոշումն ժամանակաց. կամ երբ նախնագունին վերջ. և զկնի եկողաց սկիզբն: 8 * Եւ ասաց առ իս՝ յաբրահամէ մինչև 'յիսահակ, յորժամ ծնան 'ի նմանէ յակոբ և եսաւ, ձեռն յակոբու կալեալ էր 'ի բնէ զգարշապարն եսաւայ: 9 * Զի վերջ այսորիկ կենցաղոյ եսաւ. և սկիզբն հետևողի յակոբ: 10 * Մարդոյ ձեռն 'ի մէջ գարշապարի և ձեռին. զայլ ինչ մի խնդրեր եզրաս: 11 * Պատասխանեցի, և ասացի. ո՛վ տիրող Տր, թէ գտի շնորհս առաջի աչաց քոց: 12 * Աղերսեմ, զի ցուցցես ծառայի քոյ զվերջ նշանաց քոց: որոց զմասն ինչ ինձ ցուցեր 'ի գիշերին յառաջանցելում: 13 * Եւ պատասխանեաց՝ և ասաց առ իս. արի 'ի վր ոտից քոց. և լուր զձայն լրադոյն հնչման: 14 * Եւ եղիցի որպէս շարժումն, և ոչ շարժեսցի տեղին. ներում կայցես 'ի վերայ նր: 15 * Վս այնորիկ յորժամ խօսիցի, դու մի պակնուցուս. զի 'ի վերջնոյ՝ բան և հիմն երկրի իմանի: 16 * Քանզի 'ի նոցանէ զրոյց երկնչի, և դողդի. քանզի գիտէ՝ զի վերջ նց պարտ է փոփոխիլ: 17 * Եւ եղև, իբրև լուայ՝ յարեայ 'ի վր ոտից իմոց. և լուայ, և ահա ձայն խօսեցեալ՝ և հնչումն նորա որպ հնչումն ջուրց բազմաց՝ և ասաց: 18 * Ահա աւուրք եկեսցեն, և եղիցի յորժամ մերձենալ սկսանիցիմ, զի այց արարից բնակչաց յերկրի: 19 * Եւ յորժամ խնդրել սկսանիցիմ 'ի նոցանէ, ոյք անիրաւաբար նենգեցին անիրաւութե իւրեանց. և յորժամ կատարեսցի նուաստութիւն սիոնի: 20 * Եւ երբ վերակնքեսցի կենցաղս, եթէ սկսանիցին արտադնալ. զնշանս զայսոսիկ արարից: գիրք բացցին առաջի աչաց հաստատութե, և ամենքն տեսանիցեն 'ի միասին: 21 * Եւ տարեկանք մատաղք խօսեսցին բարբառով իւրեանց. և յղիք զօր հասս ծնանիցին զերեխայս երից և չորից ամսոց. և կեցցեն, և յարուցանիցին: 22 * Եւ յանկարծակի երևեսցին վայրք սերմանեալք՝ ոչ սերմանեալք. և լիք շտեմարանք յանկարծակի գտանիցին դատարկք: 23 * Եւ փող գոչէ հանդերձ հնչմամբ. զոր իբրև ամենեքեան լուիցեն, յանկարծակի սոսկասցին: 24 * Եւ եղիցի նայնմ ժամանակի պատերազմեսցին բարեկամք ընդ բարեկամաց իբրև թշնամիք. և պակնուցու երկիր ընդ սոսա: և երակք աղբերաց կացցեն. և մի հոսիցեն յերիս ժամս: 25 * Եւ եղիցի, ամենայն որ 'ի բաց զերծցի յամենից յայսցանէ՝ զորս նախաձայնեցի քեզ. նա կեցցէ՝ և տեսցէ զփրկութի իմ. և զվերջ կենցաղոյս ձերոյ: 26 * Եւ տեսցեն ոյք վերընկալեալք են մարդիկ. որք զմահ ոչ ճաշակեցին 'ի ծննդենէ իւրեանց. և փոփոխեսցի սիրտ ներաբնակողաց՝ և յեղաշրջեսցի յայլ իմն զգացումն: 27 * Զի ջնջեսցի չարն, 28 և շիջցի ցաւն: * Բայց ծաղկեսցի հաւատն. և նկուն եղիցի ապականութի, և բացայայտեսցի ճշմարտութիւն, որ թարց պտղոյ եղև այսքանեօք աւուրբք: 29 * Եւ եղև իբրև խօսիւր ընդ իս, և ահա դոյզն ինչ նշմարէի 'ի վերայ այնորիկ առաջի որոյ կայի: 30 * Եւ ասաց առ իս զայսոսիկ. եկի ցուցանել քեզ զժամանակ գալոցի գիշերոյն: 31 * Բայց՝ եթէ վերստին աղաչեսցես. և կրկին պահեսցես եօթամբք աւուրբք, վերստին պատմեցից քեզ զմեծագոյնս քան զայնս՝ զորս 'ի տուէնջեան լուայ: 32 * Զի լսելի եղև ձայն քո առ բարձրեալն զի ետես հզօրն զուղղութիւն քո. և նախատես եղև պարկեշտութե քոյ՝ զոր 'ի մանկութէ քումմէ ստացար: 33 * Եւ վասն այսորիկ առաքեաց զիս ցուցանել քեզ զայսոսիկ զամենեսեան, և ասել քեզ. զօրացի՛ր, և մի երկնչիր: 34 * Եւ մի վաղվաղեր ընդ առաջնոցն ժամանակաց խոկալ զունայնս: և մի աճապարեսցես 'ի յետնագունից ժամանակաց: 35 * Եւ եղև յետ այսորիկ և արտասուեցի դարձեալ. և նմանապէս պահեցի աւուրբք եօթամբք. զի կատարեցից զերիս զեօթնեակս, ոյք ասացան ինձ: 36 * Եւ եղև յութներորդում գիշերոջ. և սիրտ իմ ամբոխիւր դարձեալ յիս. և սկսայ խօսիլ առաջի բարձրելոյն: 37 * Զի բորբոքիւր հոգի իմ յոյժ. և միտք իմ ձանձրանային: 38 * Եւ ասացի, ո՛վ Տր, խօսելով խօսեցար 'ի սկզբանէ արարածոյ. ներ նախորդում աւուր ասացեալ. եղիցի երկին և երկիր՝ և բան քո գործ կատարեալ: 39 * Եւ էր յայնժամ հոգի, և խաւարք շրջապատէին, և լռութի. հնչումն ձայնի մարդոյ ոչ ևս էր առ 'ի քէն: 40 * Յայնժամ ասացեր 'ի գանձուց քոց փոխաբերիլ լոյս լուսաւոր՝ որով երևեսցի գործ քո: 41 * Եւ յաւուրն երկրորդում ստեղծեր զհոգի հաստատութե, և հրամայեցեր նմա՝ զի բաժանեսցէ, և զբաժանումն արասցէ 'ի մէջ ջուրց՝ զի մասն ինչ 'ի վեր վերադարձցի. 42 իսկ մասն ինչ 'ի վայր մնասցէ: * Եւ յերրորդումն աւուր հրամայեցեր ջրոց շարահաւաքիլ յեօթներորդում մասին երկրի. բայց զվեց մասունս ցամաքեցուցեր՝ և պահեցեր. զի յայսցանէ լիցին առաջի քո սպասաւորք սերմանեալք յԱծ, և մշակեալք: 43 * Զի բան քո ըղխեաց՝ և գործ առժա-

մայն լինիւր։ 44 * Զի բղխեցոյց յանկարծակի զպտուղս անթիւս բազմութե՟՝ և ցանկութի՟ք ճաշակման յոգնակերպս, և ծաղիկք գունով անյեղափոխելեաւ․ և հոտք հոտոտելեաց անհետազօտելեաց․ և յաւուրն երրորդում այսոքիկ արարան։ 45 * Իսկ յաւուրն չորրորդում, հրամայեցեր լինել արեգական զփայլատակումն՝ լուսնոյ զլոյս՝ աստեղաց զհակարգութիւն։ 46 * Եւ հրամայեցեր նոցա՝ զի ծառայեսցեն հանդերձելոյ նկարեցելոյ մարդոյն։ 47 * Սակայն 'ի հինգերորդումն աւուր, ասացեր եօթներորդի մասին, ուր էր ջուրն հաւաքեալ․ զի հանցէ զշնչաւորս՝ և զթռչունս՝ և զձկունս․ և այնպէս լինիւր։ 48 * Ջուր համր և անշունչ․ որք Ա՟յ սաստիւն հրամայէին, զշնչաւորս առնէր։ զի յայսմանէ զքանչելիս քո ազգք պատմեսցեն։ 49 * Եւ յայնժամ շարապահեցեր զանձինս քոյայինս՝ զանուն միոյն կոչեցեր հենոք, և զանուն երկրորդին կոչեցեր լեւիաթան։ 50 * Եւ որոշեցեր զն՟ս յերկաքանչիւրոյն․ զի ոչ կարէր եօթներորդ մասն, ուր էր ջուրն ժողովեալ՝ պարունակել զն՟ս։ 51 * Եւ ետուր հենոքայ զմի մասն՝ որ ցամաքեցաւ յաւուրն երրորդի․ զի բնակեսցի նմին, ուր են լերինք հազարք։ 52 * Սակայն լեւիաթանայ ետուր զեօթներորդ մասն զգէջ, և պահեցեր զնա, զի եղիցի 'ի կլանումն որոց կամիս, և յորժամ կամիս։ 53 * Իսկ յաւուրն վեցերորդում հրամայեցեր երկրի, զի ստեղծիցէ առաջի քո զանասունս, և զգազանս, և զսողունս։ 54 * Եւ 'ի վերայ սոցա զԱդամ, զոր կացուցեր դուքս 'ի վ՟ր ամենեցուն արարածոց՝ զորս արարեր։ և յայսմանէ յառաջածիմք ամենեքեան՝ զոր միանգամ ընտրեցեր զժողովուրդ։ 55 * Զայսոսիկ զամենեան իսկ ասացի առաջի քո Տ՟ր՝ քանզի վասն մեր ստեղծեր զյաւիտեանս։ 56 * Իսկ զմնացորդս ազգս յԱդամայ ծնեալս՝ ասացեր զնոսա ոչինչ գոլ։ և քանզի աղտաղտկի նմանեցան․ և իբրև զկաթիլս յամանոյ նմանեցուցեր զյորդութի՟ նոցա։ 57 * Եւ այժմ Տ՟ր, ահա այսոքիկ ազգք որք յոչինչ կարծեցեալք են, սկսան տիրել մեզ՝ և կլանել։ 58 * Բայց մեք ժողովուրդ քո, զոր կոչեցեր անդրանիկ միածին նախանձայոյզ քո․ մատնեալք եղեաք 'ի ձեռս նոցա։ 59 * Եւ թէ վ՟ն մեր ստեղծաւ յաւիտեան, ընդէ՞ր ոչ զժառանգութիւն ստանամք հանդերձ յաւիտենիւ․ մինչև ցե՞րբ այսոքիկ։

## Գլ․ Է․

1 Եւ եղև, իբրև վերջացուցի խօսիլ ըզբանս զայսոսիկ․ առաքեցաւ առ իս հրեշտակն, որ առաքեցեալ էր առ իս ներ նախորդաց գիշերացն։ 2 * Եւ ասաց առ իս․ արի եզրաս, և լուր զխօսս՝ զորս եկի խօսիլ ընդ քեզ։ 3 * Եւ ասացի․ խօսեա՛ց Ա՟ծ իմ, և ասաց առ իս, ծով եդեալ է 'ի տեղւոջ ընդարձակում՝ զի իցէ խոր և անհուն։ 4 * Բայց լիցի նմա մուտք նանձկում տեղւոջ եդեալ․ իբրու զի իցէ նման գետոյ։ 5 * Զի ո՞ք կամելով կամեսցի մտանել 'ի ծո՛վն, և տեսանել զնա․ կամ իշխել նմա․ եթէ ոչ անցանիցէ զանձկութիւնն՝ 'ի լայնութի՟ն զիա՞րդ գալ կարիցէ։ 6 * Դարձեալ զայլ ինչ․ քաղաք է շինեալ՝ և եդեալ ներ տեղւոջ տափարակում, է և լի ամենիւք բարութե՟ք։ 7 * Մուտ ն՟ր նեղ՝ և ներ գահավիժում եդեալ՝ ո՞չ զի իցէ յաջմէ հուր, և 'ի ձախմէ ջուր խոր։ 8 * Իսկ շաւիղն է մի միայն 'ի մէջ ն՟ց եդեալ․ այս է 'ի մէջ հրոյն և ջրոյն․ զի մի՛ ըմբռնիցէ շաւիղն, 9 եթէ ոչ միայնակ զհետ մարդոյ։ * Իսկ եթէ տացի քաղաքն մարդոյ 'ի ժառանգութիւն․ եթէ ոչ երբէք ընդ նախ եդեալ վտանգն անցանիցէ, զիա՞րդ առնուցու զժառանգութի՟ իւր։ 10 * Եւ ասացի, այդպէս է Տ՟ր։ և ասաց ցիս․ այսպէս է և Իղի մասն։ 11 * Զի վ՟ն ն՟ց արարի զյաւիտեան, և յորժամ էանց զսահմանաւ իմով Ադամ, դատեցաւ որինչ արարաւ։ 12 * Եւ եղեն մուտք այսորիկ կենցաղոյ նեղք, և ցաւագինք, և տաժանականք, սակաւք իսկ, և չարք․ և վշտօք լիք, և աշխատանօք մեծաջանիւք 13 պնտեալք։ * Զի մեծագունի կենցաղոյս մուտք ընդարձակք և համարձակք․ և աբարօղք զպտուղ անմահութե՟։ 14 * Արդ՝ եթէ մտանօղքն ոչ մտի՛ն՝ որք կեան․ նեղք և ընդունայնք՝ այսոքիկ ո՛չ կարասցեն վերընդունիլ, որք են վերադրեալք։ 15 * Արդ՝ այժմ ընդէ՞ր դու ամբոխիս՝ երբ ես ապականելի․ և զի՞ վրդովիս դու՝ երբ ես մահացու։ 16 * Եւ վասն ո՞յր ոչ առեր 'ի սիրտ քո, որինչ է ապառնի․ այլ որինչ ներ ներկայումս։ 17 * Պատասխանեցի, և ասացի․ տէ՛ր Տ՟ր՝ ահաւասիկ շարադրեցեր օրէնի՛ քով․ քանզի արդարք ժառանգեսցեն զն՟ս․ իսկ ամբարիշտք կորնչիցին։ 18 * Բայց արդարք տանիցին զնեղութի՟ս՝ յուսացեալք յընդարձակութի՟ս․ իսկ որք ամբարշտաբար գործեցին, և զնեղութի՟ս կրեցին, և զընդարձակութի՟ս ո՛չ տեսանիցեն։ 19 * Եւ ասաց ցիս․ ո՛չ գոյ դատաւոր 'ի վեր քան զԱ՟ծ․ և ո՛չ 20 իմացօղ գեր քան զբարձրեալն։ * Զի կորնչին բազումք ներկայականք․ քանզի անգոսնի, որ առաջի եդեալ է օրէն Ա՟յ։ 21 * Զի պատուիրելով պատուիրեաց Ա՟ծ եկողաց՝ յորժամ եկին, զինչ առնելով կեցցեն, և զինչ պահելով ո՛չ պատուհասեսցին։ 22 * Այլ այսոքիկ ո՛չ են հաւանեալք, և հակառակ ասացին նմա․ և բազմացուցին ինքեանց զխոկումն ունայնութե՟։ 23 * Եւ նախադրեցին ինքեանց զշարայածութի՟ս յանցանաց․ և վերախօսեցան բարձրելոյն ո՛չ գոլ։

գոլ ։ և զճանապարհս նորա ոչ ծանեան ։
*Եւ զօրէնս նր արհամարհեցին ։ և զխոստ 24
մունս նր 'ի բաց ուրացան ։ և 'ի պատուի_
րանս նր զհաւատ ոչ ընկալան ։ և զգործս
նր ոչ կատարեցին ։ *Վասն այսորիկ Եզրաս, 25
դատարկ դատարկօք, և լի, լիօք ։
*Զի հաւասիկ ժամանակ եկեսցէ, և եղիցի 26
յորժամ եկեսցեն նշանքն, զորս նախասա_
ցի քեզ ։ և երեւեսցի խոստումն, և երեւելով_
ցուցանիցի, որ այժմ ստորաքերի երկիր ։
*Եւ ամենայն որ փրկեցեալ է 'ի նախասա_ 27
ցելոցս չարեաց՝ այն տեսցէ զիմս զքան_
չելիս ։ *Զի յայտնեսցի որդին իմ Յս 28
հանդերձ նոքօք՝ ոյք ընդ նմա են. և բերկ_
րեսցին, ոյք մնացին յամս քառերիւրս ։
*Եւ եղիցի յետ ամացս այսոցիկ, և մեռա_ 29
նիցի որդին իմ Քս. և ամենեքեան որք
զշնչումն ունին մարդիկք ։ *Եւ անդրա_ 30
դարձցի յաւիտեանս 'ի նախկին լռութիւն
աւուրքս եօթամբք. որպէս ներ նախորդաց
դատաստանաց. այնպէս զի ոչ ոք թողցի ։
*Եւ եղիցի յետ աւուրց եօթանց, և զար_ 31
թուցի. որ ոչ ևս հսկէ կենդանս. և մեռցի
ապականեալ ։ *Եւ երկիր վերատրեսցէ՝ 32
ոյք 'ի նմա ննջեն. և հող, որք ներ այնմ
լռութբ բնակեն. և շտեմարանք վերա_
տրեսցեն՝ ոյք նոցա աւանդեալք են հոգիք ։
*Եւ յայտնեսցի բարձրեալն 'ի վերայ աթո 33
ռոյ դատաստանի. և արտաքնասցեն թշ_
ուառութիւնք. և երկայնմտութի հաւաքես_
ցի ։ *Բայց միայն դատաստան վերահաս_ 34
ցէ, ճշմարտութի կայասցի. և հաւատ շա_
րակեցցէ ։ *Եւ գործ զկնի հետևեսցի. և 35
վարձն ցուցանիցի. և արդարութիւնք զգաս_
տասցին՝ և անիրաւութիւնք ոչ ևս տիրեսցեն ։
*Եւ ասացի, նախ աբրահամ վասն սոդո_ 36
մայեցւոցն աղօթեաց. և մովսէս վս հարցն՝
որք յանապատին մեղան ։ *Եւ որք զկնի 37
նր վս իլի յաւուրս աքաաւ՝ և սամուէլի ։
*Դաւիթ վս բեկման. և սաղոմոն վասն 38
նոցա՝ որք եկին 'ի սրբագործութիւն ։ *Եւ 39
եղիաս սակս այնոցիկ՝ որք զանձրև ընկա_
լան. և սակս մեռելոյն, զի կեցցէ ։ *Եւ 40
եզեկիաս վասն ժողովրդեանն յաւուրս
սենաքերիմայ ։ և բազումք վասն բազմաց ։
*Արդ՝ եթէ նորդեանս յորժամ ապակա_ 41
նելին աճեաց. և անիրաւութի բազմա_
պատկեալ է. և աղօթեցին արդարք սակս
ամբարշտաց. ընդէ՞ր և այժմ այնպէս ոչ
եղիցի ։ *Եւ պատասխանեաց առ իս՝ և ա_ 42
սաց. ներկայի յաւիտենի ոչ գոյ վերջ.
փառք նոյնմ յաճախ մնան ։ վս այնորիկ ա_
ղօթեցին վս տկարաց ։ *Զի օր դատաս_ 43
տանի եղիցի վերջ ժամանակի այսորիկ,
սկիզբն ժամանակին հանդերձելոյ անմա_
հութե ։ նորում անցեալ գնաց ապակա_
նութիւն ։ *Լուծեալ է անբարեխառնու_ 44
թե. հերքեալ է անհաւատութի. բայց ա_

ՃԽԷ ։

ճեաց արդարութի. ծագեցաւ ճշմարտու_
45 թի ։ *Զի յայնժամ ոչ ոք կարէ կեցուցա_
նել զայն, որ կորեաւ. և ոչ ընկճել՝ որ
46 յաղթեաց ։ և պատասխանեցի ։ *Եւ ասա_
ցի, այս է զրոյց իմ նախորդ և յետնորդ.
քանզի բարւոք էր ոչ տալ զերկիր ադա_
մայ. կամ երբ արդէն ետ, վերամրացու_
47 ցանել զնա ոչ մեղանչել ։ *Զի զի՞նչ օգուտ
է մարդկան, ներ ներկայումս ապրիլ տրտ_
մութբ. և զկնի մեռանելոյ՝ սպասել պատ_
48 ժոց ։ *Ով դու զի՞նչ արարեր ադամ ։ զի
եթէ դու մեղանչեցեր, ոչ է արարեալ միայ
նոյ անկումն քո. այլ և մերն, ոյք 'ի քէն առ_
49 գամք ։ *Զի զի՞նչ օգուտ է մեզ. թէ խոս_
տացեալ է մեզ անմահ ժամանակ. սակայն
50 մեք զգործս մահացուս կատարեմք ։ *Եւ
քանզի նախաճառեալ է մեզ մշտնջենաւ_
որ յոյս. իսկ մեք չարադոյնք ընդունայնք
51 եղեաք ։ *Եւ քանզի վերադրեալք են մեզ
բնակարանիկք բժշկութե և ապահովութե.
իսկ մեք չարապէս անդրադարձուցաք ։
52 *Եւ քանզի վերադրեալք են փառք բարձ_
րելոյն՝ հովանաւորել զնս՝ որք յամբարար
անդրադարձան. բայց մեք չարագունիւք
53 ճանապարհօք ընթացաք ։ *Եւ քանզի
ցուցցի դրախտն. որոյ պտուղն անապական
յարակայանայ. նորումն է ապահովութի
54 և բժշկականութի ։ *Իսկ մեք ոչ մտանի_
ցեմք, քանզի 'ի տեղիս ապաշնորհս անդրա_
55 դարձաք ։ *Եւ քանզի գեր քան զաստեղս
փայլեսցին երեսք նոցա, որք զժուժկալու_
թի ունեցան ։ բայց մեր երեսք առաւել քան
56 զխաւարս սևաւք ։ *Զի ոչ մտածեցաք 'ի
կենդանութե, երբ զանիրաւութիս առ_
նէաք, եթէ սկսանիցիմք զկնի մահու կրել ։
57 *Եւ պատասխանեալ ասաց. այս է խոկումն
ճակատամարտի եթէ ճակատեսցի, որ 'ի
58 վր երկրի ծնեալ է մարդ ։ *Զի թէ յաղ_
թեսցի, կրեսցէ զոր ասացեր. բայց եթէ
59 յաղթեսցէ՝ առցէ զոր ասեմ ։ *Քանզի
այս է կեանք՝ զոր մովսէս ասաց. յորժամ
կենդանի էր՝ առ ժողովուրդն՝ ասացեալ ։
60 ընտրեա՛ քեզ զկեանս, զի կեցցես ։ *Բայց
ոչ հաւատացին նմա. այլև ոչ յետ նր մար_
գարէիցն ։ նա և ոչ ինձ, որ խօսեցայ ընդ
61 նս ։ *Քանզի ոչ լինի տրտմութի 'ի կորուստ
նց. ոչ հանդերձեալ է ուրախութի 'ի վր
62 նոցա, որոց հաւանելի է փրկութի ։ *Եւ
պատասխանեալ ասացի. գիտեմ Տր. քան_
զի կոչեցաւ բարձրեալն ողորմած՝ այնու,
զի ողորմեսցի նոցա, ոյք դեռևս ոչ 'ի կեն_
63 ցաղս եկին ։ *Եւ եթէ ողորմի նոցա՝ ոյք
զանդրադարձումն առնեն յօրէնս նորա ։
64 *Եւ երկայնամիտ է՝ քանզի զերկայնամը_
տութի բաշխէ նց, որք մեղան իբրու գոր_
65 ծովք իւրեանց ։ *Եւ ճոխ է՝ քանզի պար_
գևել յաւէտ կամի փոխանակ պահանջելոյ
66 *Եւ բազումողորմ, քանզի բազմապատկէ

առաւել զողորմութիւնս այնոցիկ. ոյք այժմու են, և որք անցին, և որք հանդերձեալք են։ 67 *Զի եթէ ոչ բազմապատկեսցէ զողորմութիւնս իւր, ոչ կենդանացուցի յաւիտեանս հանդերձ նոքօք՝ որք ժառանգեսցեն 'ի նմա։ 68 *Եւ պարգևէ, քանզի եթէ ոչ պարգևեսցէ 'ի բարութիւն իւրմէ. զի վերականգնեսցին այնք, որք զանօրէնութիւնս արարին, սակս իւրեանց անօրէնութեանց, ոչ կարիցէ տասնիցս հազարերորդ մասն կենդանացուցանիլ մարդկան։ 69 *Եւ դատաւոր եթէ ոչ ներեսցէ նոցա, որք բժշկեցան բանիւն նորա. և ջնջեսցէ զբազմութիւն հեստութեանց, գուցէ ոչ թողանիցին ներ անհամարում բազմութեն, եթէ ոչ՝ կարի սակաւք։

## ԳԼ։ Ը։

1 Եւ պատասխանեալ առ իս ասաց. զյաւիտեանս զայս արար բարձրեալն վասն բազմաց՝ իսկ զհանդերձեալն սակս սակաւուց։ 2 *Բայց ասացից առաջի քո զհամեմատութիւն ինչ Եզրաս։ իսկ զիարդ հարցանիցես զերկիր՝ և ասիցէ քեզ։ զի տացէ զբազում զերկիր առաւել՝ ուստի եղիցի խեցեղէն. բայց զսակաւ փոշի, ուստի լիցի ոսկի. այսպէս և իրակութիւն ներկայի յաւիտենիս։ 3 *Քանզի յոլովք են ստեղծեալք, սակայն սակաւք կեցցեն։ 4 *Եւ պատասխանեցի՝ և ասացի։ արդ՝ կլլեսցէ հոգւով զզգայարանն. և լափեա, զոր համեմէ։ 5 *Զի գումարեցեր ստորալսել՝ և մարդաբանել կամեցեալ։ Զի ոչ է տուեալ քեզ բացատութիւն՝ եթէ ոչ միայն և եթ կեալ։ 6 *Ով Տէր. եթէ ոչ թողացուցես ծառայի քում՝ զի աղօթեսցուք առաջի քո, և տացես մեզ զսերմն սրտի, և զզգայարանի զպաշտօն, ուստի լիցի արմտի։ ուստի կեալ կարիցէ ամենայն ապականեալ, որ բառնայցէ զտեղի մարդոյ։ 7 *Զի միայն ես, և մի կազմուած մեք եմք ձեռաց քոց. որպէս խօսեցար։ 8 *Եւ զիարդ այժմ նարդանոտում կազմեցաւ մարմին, և բաշխես զանդամս։ պահի ներ հրով և ջրում քո ստեղծուած. և ըննօք ամիսս կրէ քոյոյին կազմած, զքո զարարածն. որ ներ այնմ ստեղծեալ է։ 9 *Այնինքն որ պահէ՝ և որ ինչ պահի՝ երկաքանչիւրքն պահեսցին։ զպահեալսն ևս երբեմն երբեմն վերստին վերատրէ արգանդն. ոյք նոյնմ աճեցին։ 10 *Զի հրամայեցեր 'ի նոցունց անդամոց. այսինքն 'ի ստեանց բաշխել զկաթն արդեան ստեանց։ 11 *Զի բուծանիցի՝ այն որ կազմեալ է մինչև 'ի ժամանակ իմն. և յետ այնորիկ հակակայեսցես զնա քոյոյ ողորմութեն։ 12 *Բուծեր զնա քոյով արդարութեամբ. և վարժեցուցեր զնա օրինօք քով. և յանդիմանեցեր զնա քոյով իմացականութբ։ 13 *Եւ մահացուցես զնա իբրու զքո զարարած. և կենդանացուցես 14 զնա իբրև զգործ քո։ *Արդ՝ եթէ կորուսցես զնա՝ որ այսքան նեղօք աշխատանօք կազմեցաւ. քոյով հրամանաւ դիւրին է կարգաւորել։ 15 զի և այն՝ որ լինիւր՝ պահեսցի։ *Եւ այժմ Տէր ասացից, սակս ամենեցուն մարդոց դու առաւել գիտես։ բայց յաղագս 16 ժողովրդեան քոյ՝ վասն որոյ ցաւիմ. *Եւ սակս ժառանգութեան քոյ՝ վասն որոյ սգամ. և յաղագս Իսրայէլի՝ վասն որոյ տրտում եմ. և սակս 17 յակոբայ՝ վասն որոյ վշտանամ։ *Վասն որոյ սկսայց աղօթել առաջի քո՝ վասն իմ, և վասն նոցա։ քանզի տեսանեմ լքեալս զմերայինս. 18 որք ներբնակիմք յերկրի։ *Բայց լուայ զշուտափութութիւն դատաւորին՝ որ հանդերձեալ է։ 19 *Վասն այնորիկ լուր ձայնի իմոյ՝ և իմա զխօսս իմ. և խօսեցայց առաջի քո։ 20 *Սկիզբն բանիցն Եզրասայ նախ քան թէ առեալ լինիցի։ և ասացի, Տէր, որ բնակիս 'ի յաւիտեան. որոյ աչք ամբարձեալք 21 ներ վերնայնում, և օդում. *Եւ որոյ աթոռն անհասանելի է, և փառքն անպարունակելիք։ որոյ առկան զօրք հրեշտակաց 22 հանդերձ երկիւղիւ։ *Որոց պահպանութիւն ներ հողմում և հրով շրջագայի. որոյ բանն ճշմարիտ է. և ասացուածն հանապազորդութեամբ։ 23 *Որոյ հրամանն հզօր, և հակադրութիւն ահաւոր. որոյ հայեցուածն տոչորէ զանդունդս, և զայրացուածն հալէ զլերինս, և 24 ճշմարտութիւն վկայէ։ *Լուր աղօթից ծառայի քոյ. և ունկնդիր լեր մաղթանաց կազմածոյ քոյ։ 25 *Զի մինչ կեամ, խօսեցայց. և 26 մինչ խոկամ, պատասխանեցից։ *Մի՛ հայեսցիս 'ի յանցանս ժողովրդեան քոյ. այլ 27 որք քեզ ճշմարտութեամբ ծառայեն։ *Եւ մի՛ ձգեսցես զկրթութիւնս ամբարշտաց հեթանոսաց։ այլ որք զվկայութիւնս քո հանդերձ 28 ցաւօք պահպանեցին։ *Եւ մի՛ 'ի միտ խուզեսցես՝ որք առաջի քո ստաբար կենցաղավարեցան. սակայն յիշեա, որք ըստ կամաց 29 քոց զերկիւղ ծանեան։ *Եւ մի՛ կամեսցիս կորուսանել՝ ոյք անասնական բարս ընկալան. այլ հայեսցիս 'ի նոսա. որք զօրէնս 30 քո պայծառաբար ուսուցին։ *Եւ մի՛ ցասնուցուս այնոցիկ, որք քան զգազանս չարագոյնք դատեցան. այլ սիրեսցես զնոսա, ոյք միշտ յարդարութիւն քո յուսան, և 'ի 31 փառս։ *Քանզի մեք և հարքն մեր այսպիսեօք ախտիւք խօթանամք. բայց դու վասն մեր մեղաւորացս ողորմասիրտ կոչեսցիս։ 32 *Զի եթէ բաղձասցիս՝ զի մեզ ողորմեսցիս՝ յայնժամ ողորմած կոչեսցիս, սակայն մեզ ոչ ունողացս զգործս արդարութեն։ 33 *Զի արդարք՝ որոց գոն գործք բազումք յարաբարդեալք՝ 'ի սեպհականաց գործոց 34 վերընդունին զվարձս։ *Զի զինչ է մարդ՝ զի ցասնուցուս նմա. կամ սեռ ապականելի՝ զի այդպէս դառնասցիս վասն նորա։ 35 *Զի ներ ճշմարտութեն ոչ ոք 'ի ծնեցելոց է

որ

որ ոչ ամբարշտաբար խորհէ ։ և՛ ի խոս_
տովանողաց՝ որ ոչ յանցանի ։
36 * Օ՛ի նայիմ հրատարակեսցի արդարութի
քո՛ և բարութի քո Տր ․ երբ ողորմած ե_
ղիցիս այնոցիկ՝ ոյք ոչ ունին զգոյացութի
բարեաց գործոց ։ 37 * Եւ պատասխանեաց
առ իս , և ասաց ․ ուղղապէս խօսեցար զո_
մանս․ և ըստ զրուցաց քոց՝ ըստ այնմ և լիցի ։
38 * Վ․անզի ոչ ուղղապէս խոկացից ՚ի վերայ
կազմածոյ նոցա ․ որք մեղան նախ քան
զմահ՝ նախ քան զդատաստան՝ յառաջ քան
զկորուստ ։ 39 * Ա․յլ խնդացայց ՚ի վր կազ_
մածոյ արդարոց ․ և յիշեցից զիր նշդե_
հութե եւս , և կեցման , և վարձու ընդու_
նելութե ։ 40 * Ո․րդ՝ զիարդ խօսեցայ՝ այնպէս
և է ։ 41 * Օ՛ի որպ հողագործ սերմանէ ՚ի վր
երկրի զսերմանիս յոլովս ․ և զտունկս բազ
մութե տնկէ ․ այլ ոչ ներ ժամանակում ,
ամենեքեան ոյք սերմանեցան՝ կեցցեն ։ այլ
և ոչ ամենեքեան որք տնկեցան , արմատա
ցին ։ այսպէս և ոյք ներ կենցաղումս սեր_
մանեցան՝ ոչ ամենեքեան կեցցեն ։ 42 * Եւ
պատասխանեալ ասացի ․ եթէ գտի շնորհս,
խօսեցայց ։ 43 * Ո․րպ սերմն մշակի եթէ ոչ ելա_
նիցէ՝ կամ ոչ ընդունիցի զանձրև քո ՚ի ժա_
մանակի ․ կամ թէ ապականեսցի բազմու_
թբ անձրևոյ , 44 * Ա․յսպէս կորնչի , և նմա_
նապէս մարդ , որ ձեռօք քովք կազմեցաւ ․
և դու նմա պատկեր անուանեալ ։ քանզի
նմանեցար նմա ․ վն որոյ զամենեսեան կազ
մեցեր՝ և նմանեցուցեր սերման հողագոր_
ծի ։ 45 * Մ՛ի բարկասցիս ՚ի վերայ մեր ․ այլ
խնայեա՛ ՚ի ժողովուրդ քո ․ և ողորմեա՛ց ժա_
ռանգութե քոյ ։ իսկ դու արարածոյ քոյ
ողորմեսցիս ։ 46 * Եւ պատասխանեաց առ իս՝
և ասաց ։ ոյք են ներկայք , ներկայիւք ․ և
ոյք ապառնիք , ապառնեօք ։ 47 * Օ՛ի բազում
քեզ վերամնայ՝ զի կարասցես սիրել զիմ
զստեղծուածն ՚ի վեր քան զիս ։ բայց քեզ
յաճախաբար և ինքեան մերձաւորեցայ ։
իսկ անիրաւաց ոչ երբէք ։ 48 * Եւ այսու
զցանչելի ես առաջի բարձրելոյն ։ 49 * Վ․անզի
տարկացուցեր զքեզ ․ որպ վայել է քեզ ․ և
ոչ դատեցեր զքեզ ․ զի ՚ի մէջ արդարոց
բազմապատկապէս փառաւորեսցիս ։ 50 * Ս․
այնորիկ եղկութիք բազումք , և թշուառ_
ութիք հետևեսցին նոցին՝ ոյք բնակին՝ ՚ի
կենցաղս ներ վերջնոցն զի բազմաւ հպար_
տութբ շրջեցան ։ 51 * Ա․կայն դու վասն քո
խմն՛, և սակս նմանեաց քոց խուզեա՛ զփառս ։
52 * Օ՛ի ձեզ բացեալ է դրախտն ․ տնկեալ է
ծառն կենաց ․ նախապատրաստեցաւ ապառ_
նի ժամանակ ․ նախապատրաստեցաւ առա
տութի ․ շինեցաւ քաղաք ․ փորձեցաւ հան_
գիստ ․ կատարեցաւ բարութի ․ և լրացաւ
իմաստութի ։ 53 * Ա․րմատ չարի բայստուէլ
է ՚ի ձէնջ ․ հիւանդութի , և ցեց ՚ի ձէնջ
թաքուցեալ է ․ և ՚ի դժոխս փախեաւ ապա_

14 կանութիւն ներ մնացութե ։ * Ա․նցեալ
գնացին ցաւք ․ և ցուցաւ ներ վերջնում
45 գանձ անմահութե ։ * Ա․պաքէն մի յաւե_
լուր ներախուզելով յաղագս բազմութե
56 նոցա՝ որք կորեան ։ * Օ՛ի և նոքա առեալք
զազատութի քամահեցին զբարձրեալն ․ և
զօրէնս նր անգոսնեցին ․ և զճանապարհս
57 նր ՚ի բաց թողին ։ * Ա․կայն դեռևս զար_
58 դարս նր կոխան արարին ։ * Եւ ասացին ՚ի
սիրտս իւրեանց՝ ոչ գոյ Ա․Ծ ։ և արդարև
59 գիտացեալք՝ զի մեռանին ։ * Օ՛ի որպէս
զձեզ ընկալցին՝ որք նախաձառեցանն, այս_
պէս զնս ծարաւն , և չարչարանքն, որք նա_
խապատրաստեցան․ զի ոչ կամեցաւ զմարդն
60 կորնչել ։ * Նա և այնք՝ որք ստեղծան, զար_
շեցուցին զանունն նր՝ որ արար զնս․ և ապա_
շնորհք եղեն նմին ․ որ նախապատրաստեաց
61 նց զկեանս ։ * Ս․ այնորիկ դատաստան իմ
62 արդէն մերձեցաւ ։ * Օ․րս ոչ ամենեցուն
նշանակեցի, եթէ ոչ քեզ․ և քեզ նմանեաց
սակաւուց ։ և պատասխանեալ ասացի ։
63 * Ա․հաւասիկ Տր , նշանակեցեր ինձ զբազ
մութի նշանաց , զորս ձեռնարկեսցես առ_
նել ներ յետնոյ ․ բայց ոչ նշանակեցեր
ինձ որով ժամանակաւ ։

## Գլ ։ Թ ։

1 Եւ պատասխանեաց առ իս՝ և ասաց ․
չափու չափեա՛ զժամանակ ներ ին_
քեան ․ և եղիցի երբ տեսանիցես , յորժամ
անցեալ գնասցէ մասն մի նշանացն , որք
2 նախասացան , * Յայնժամ հասկասցիս՝
քանզի այն է ժամանակ , նորում ձեռնար_
կեսցէ բարձրեալն այց առնել յաւիտենին,
3 որ ՚ի նմանէ արարեալ է ։ * Եւ յորժամ
տեսանիցի ներ աշխարհում շարժումն տե_
4 ղեաց՝ և ժողովրդոց ամբոխումն ,* Յայն_
ժամ հասկասցիս՝ զի զայսցանէ էր բարձ_
րեալն խօսեցեալ՝ յաւուրցն որք եղեն նախ
5 քան զքեզ ՚ի բնէ ։ * Օ՛ի որպ ամ որ եղև
ներ աշխարհում, զսկիզբն ունի , համայն
և զկատարած ․ և կատարածն է յայտնի ։
6 * Ա․յսպէս և բարձրելոյն ժամանակք զսկզ
բունս ունին յայտնիս ներ ցուցակաց և զօ_
րութեց ․ և կատարածս նիրակութե և ներ
7 նշանաց ։ * Եւ եղիցի , ամ որ կեցցէ , և որ
կարիցէ փախչել ՚ի ձեռն գործոց իւրոց ․ և
՚ի ձեռն հաւատոյ որով հաւատացիք ։
8 * Թողցի ՚ի նախասացելոցս վտանգից ․ և
տեսցէ զփրկութի իմ յերկրին իմում ․ և
ներ սահմանաց իմոց ։ քանզի սրբագործե_
9 ցի զիս ՚ի կենցաղոյս ։ * Եւ յայնժամ թշուա
ռասցին , ոյք այժմ եղծանեն զճանապարհ
իմ ․ և ՚ի մամուլս շարափակեսցին այնոքիկ՝
որք զնս ընդ վայր հարին արհամարհութբ ։
10 * Օ՛ի որք ոչ ճանաչեցին զիս, ՚ի կենդանութե
11 հետևեալք բարերարութե ։ * Եւ ոյք ար_
համարհեցին զօրէնս իմ ․ մինչդեռ ունէին
զա_

զաղատութիւն։ 12 *Եւ մինչդեռ էր նոցա բաց ցայայտ ապաշխարութեան տեղին, ոչ իմացան, այլ քամահեցին՝ նմա պարտ է զկնի մահուն ներ տանջանարանաց ճանաչել։ 13 *Ապաքէն դու մի հետաքրքիր լինիր դեռ արդէն. զիարդ ամբարիշտք տանջեսցին. այլ խուզեա՛ զիա՛րդ արդարք ապրեսցին. և որո՛ց յաւիտեան, և վասն որո՛ց յաւիտեան, և յո՛րժամ։ 14 *Եւ պատասխանեալ ասացի։ 15 *Կանխաւ խօսեցայ, և այժմ ասեմ, և յետոյ ասացից. քանզի յոգունք են՝ որք կորնչին՝ քան որք կեցցեն։ 16 *Որպէս բազմապատկին ալիք ՚ի վր կաթլոյ։ Եւ պատասխանեաց առ իս՝ և ասաց. 17 *Որպիսի ագարակք՝ սոյնպիսիք և սերմանք. և որպիսիք ծաղկունք՝ սոյնպիսիք և ներկք. և որպիսի գործաւորն, սոյնպիսի և ստեղծուածն. որպիսի հողագործն՝ սոյնպիսի և երկրագործութիւն. քանզի ժամանակ էր կենցաղոյս։ 18 *Եւ այժմ երբ եմ պատրաստող նոցին՝ այնոցիկ որք այժմ են. նախ քան զգոլ յաւիտենիս. յորում բնակիցեն. և ոչ ոք ինձ ընդդէմ ասաց։ 19 *Զի յայնժամ ոլոք, և այժմ ստեղծիչ նայում աշխարհի պատրաստեցելում, և հնձում անապականեցելում, և օրինում անհետազօտեցելում ապականեցան բարք նոցա։ 20 *Եւ նկատեցի ՚ի կենցաղս. և ահա էր վտանգ վասն խոկմանցն, որք նայում առեկին։ 21 *Եւ տեսի, և խնայեցի ՚ի նա կարի յոյժ. և պահեցի ինձ զձիթ յողկուզէ՝ և զտունկ ՚ի ցեղէ բազմէ։ 22 *Ապաքէն կորիցէ բազմութիւն, որ թարց պատճառի ծնեալ է. և պահեսցի ձիթն իմ, և տունկն իմ, զի հանդերձ բազմաւ աշխատութեամբ կատարեցի։ 23 *Իսկ դու թէ դեռևս ՚ի մէջ արկցես զեօթն ևս աւուրս. բայց ոչ պահեսցես ՚ի նոսա։ 24 *Գնասցես ՚ի դաշտ ծաղկանց. ուր տուն ոչ է կառուցեալ։ և կերիցես միայնակ ՚ի ծաղկանց դաշտին. և զմիս մի ճաշակեսցես. և զգինի մի ըմպիցես. այլ միայնակ զծաղիկս։ 25 *Աղաչել զբարձրեալն անխափան. և եկից, և խօսեցայց ընդ քեզ։ 26 *Եւ չոգայ՝ որպէս ասաց ինձ, ՚ի դաշտն, որ կոչի արդաթ. և նստայ անդ ներ ծաղկանց։ Եւ ՚ի բանջարոց ագարակին կերի. և եղև յուտելն նոցա ինձ ՚ի յագուրդ։ 27 *Եւ յետ եօթնից աւուրց, և ես բազմէի ՚ի վր խոտոյ. և սիրտ իմ վերստին ամբոխիւր որպէս նախ։ 28 *Եւ բացաւ բերան իմ. և սկսայ ասել առաջի բարձրելոյն. և ասացի։ 29 *Ով Տր՝ զքեզ մեզ ցուցանող. ցուցար հարցն մերոց յանապատին. որ ոչ կոխի, և յանպտուղ. յորժամ էին ելեալք յեգիպտոսէ. և ասելով ասացեր։ 30 *Դու Իէլ լուր ինձ. և զաւակ յակոբայ հայեա՛ց ՚ի խօսս իմ։ 31 *Զի ահա ես սերմանեմ ՚ի ձեզ զօրէնս իմ, և արասցէ ՚ի ձեզ զպտուղ. և փառաւորիցիք ՚ի նմա ՚ի ձեռն յաւիտենին։ 32 *Զի հարքն մեր ընկալեալք զօրէնս, ոչ պահեցին. և պատուիրանացն քոց ոչ զգուշացան. և եղև պտուղ օրինին անծնունդ. զի և ոչ կարէր, քանզի քոյն էր։ 33 *Այլ զի որք ընկալան, կորեան. ոչ պահելով, որ ՚ի նոսա սերմանեալ էր։ 34 *Եւ ահաւասիկ, սովորութիւն է. զի յորժամ առցէ երկիր զսերմն. կամ զնաւ ծով. կամ աման ինչ զկերակուր և զըմպելի։ յորժամ իցէ արտասահմանեալ այն, նորում սերմանեալ է՝ կամ յոր արկեալ է։ 35 *՚Ի միասին այն որ սերմանեալ կամ արկեալ է. կամ որք ընկալեալք են, արտասահմանին. և ընկալեալքն արդէն ոչ մնան առ մեզ. այլ մեզ այսպէս ոչ է եղեալ։ 36 *Նայց մեք՝ որք զօրէն ընկալաք՝ մեղանչելով կորեաք. և սիրտ մեր՝ որ ընկալաւ զայն։ 37 *Զի օրէնն ոչ կորեաւ. այլ յարամնաց նիւրում վաստակում։ 38 *Եւ իբրև խօսէի զայսոսիկ ներ սրտիջ իմում, ՚ի վեր հայեցայ աչօք իմովք. և տեսի զկին յաջմէ կողմանէ. և ահա նա լայր՝ և ողբայր ձայնիւ մեծաւ. և հոգւով ցաւիւր կարի. և հանդերձք նր պատառեալք. և մոխիր ՚ի գլուխ նորա։ 39 *Եւ թողի զխոկմունսն. ներ որոց էի խոկալով. և դարձայ առնա՝ և ասացի նմա։ 40 *Ընդէ՞ր ողաս. և վասն էր կսկծաս հոգւով։ 41 Եւ ասաց առ իս։ *Թո՛ղ ինձ Տր իմ, զի ողացից զիս, և առարկից զկրկիծս. քանզի կարի դառնացելով հոգւով եմ. և տրտմեալ եմ սաստիկ։ 42 *Եւ ասացի նմա. զինչ կրեցեր, ասա ինձ։ Եւ ասաց ցիս։ 43 *Ամուլ եղէ ես աղախին քո. և ոչ ծնայ, ունելով զայր յամս երեսուն։ 44 *Զի ես ՚ի ձեռն իւրաքանչիւրոց ժամուց՝ և իւրաքանչիւրոց աւուրց՝ և զամս զայսոսիկ զերեսուն աղաչեմ զբարձրեալն ՚ի տուէ և ՚ի գիշերի։ 45 *Եւ եղև զկնի երեսնից ամաց՝ առլուաւ ինձ ԱԾ աղախնոյ քո. և ետես զտրտմութիւն իմ. և հայեցաւ ՚ի տառապանս իմ. և ետ ինձ զորդի. և բերկրեցայ ՚ի վր նորա ես յոյժ՝ և այր իմ. և ամենեքեան քաղաքացիք իմ, և պատուէաք յաւէտ զՀզօրն։ 46 *Եւ սնուցի զնա հանդերձ ջանիւ մեծաւ։ 47 *Եւ եղև իբրև աճեաց մանուկն, և եհաս առնուլ զկին, արարի զօր ճաշկերութեան։

## ԳԼ: Ժ.

1 Եւ իբրև եմուտ որդին իմ յառագաստ իւր՝ անկաւ, և մեռաւ։ 2 *Եւ կործանեցաք ամենեքեան զճրագս. և յարեան քաղաքացիքն իմ ամենեքեան առ ՚ի մխիթարել զիս։ և հանգեայ մինչև ցմիւսն օր, մինչև յերեկոյն։ 3 *Եւ եղև իբրև ամենեքեան հանդարտեցան ՚ի մխիթարելոյ զիս՝ զի դադարեցի։ և յարեայ գիշերայն, և փախեայ. և եկի, որպէս տեսանես նայում դաշտում։ 4 *Եւ արդ խոկամ ոչ անդրադառնալ ՚ի քաղաքն։

ղաքն. այլ աստ կայանալ. որ և ոչ ճաշակել. և ոչ ըմպել. այլ անդադար ողբալ. և պահել մինչև ցյորժամ մեռայց։ 5 *Եւ ես 'ի բաց թողի զզրոյցն՝ յորս էի. և պատասխանեցի հանդերձ ցասմամբ առ նա՝ և ասացի. 6 *Յիմար դու քան զամենեսեան կանայս, ո՞չ տեսանես զողբս մեր, և որք մեզ հանդիպին։ 7 *Սի զի սիոն մայր մեր ամենից տրտմութեամբ տխրի. և տարակուսութեամբ տարակուսեալ է. և ողբայ կարի յոյժ։ 8 *Եւ այժմ քանզի ամենեքեան ողբամք, և տխուրք եմք. զի ամենեքեան տրտմակցեցաք. իսկ դու տրտմիս վասն միոյ որդւոյ։ 9 *Հարց զերկիր՝ և ասասցէ քեզ. զի այս է՝ որ պարտ էր ողբալ՝ զանկումն այսքանեաց 'ի վերայ ինքեան բողբոջողաց։ 10 *Եւ յայսմանէ 'ի բնէ ամենեքեան ծնեալք՝ և այլք եկեսցեն. և ահա, գրեթէ ամենեքեան 'ի կորուստ ընթանան. և արտասահմանեալ լինի բազմութիւն նոցա։ 11 *Եւ արդ՝ ո՞վ ոք պարտի ողբալ առաւել՝ եթէ ոչ այն, որ զայսքան զմեծ զբազմութիւն կորոյս, քան դու՝ որ վասն միոյ կսկծաս. իսկ թէ ասես ինձ. 12 *Քանզի ոչ է կոծ իմ նման երկրի. զի զպտուղ որովայնի իմոյ կորուսի, զոր թախծութեամբ ծնայ. և հանդերձ երկամբք սերեցի. 13 *Սակայն երկիր ըստ ճանապարհի երկրի, և առ դնայ նայնմ բազմութիւն ներկայ, որով եղանակաւ եկն. և ես քեզ ասեմ. 14 *Սոյնպէս դու հանդերձ աշխատութեամբ ծնար. այսպէս և երկիր տայ զպտուղ իւր մարդկան. 'ի սկզբանէ այնմ, որ արար զնա. 15 *Արդ՝ այժմ վերակալ առ քեզ ինքնին զցաւ քո. և հզօրաբար տար, որք քեզ դիպեցան անկմունք. 16 *Զի թէ արդարացուցես զսահման Այ. և զխորհուրդ նորա վերընկալցիս 'ի ժամանակի. և ներ այսպիսեաց յարադովեսցիս. 17 *Արդ՝ մուտ 'ի քաղաքն առ այր քո. և ասաց առ իս. 18 *Ոչ արարից, և ոչ մտից 'ի քաղաքն, այլ աստ մեռայց. 19 *Եւ առադրեցի դեռևս խօսիլ առ նա. և ասացի. 20 *Մի՛ առներ զայդ բան՝ այլ անսա հաւանեցուցանողիս. զի որքան անկումն սիոնի, մխիթարեա՛ վասն կսկծոյն եղեմի. 21 *Քանզի տեսանես՝ զի սրբագործութիւն մեր աւերեալ եղև. և սեղան մեր փլեալ. և տաճար մեր հիմնայատակեալ. 22 *Եւ սաղմոս մեր նուաստացեալ. և ներբողեան համալռեացք. և ցնծութիւն մեր լքաւ. և լոյս աշտանակի մերոյ նսեմացաւ. և տապանակ կտակարանաց մերոց աւարի հարաւ. և սրբութիւնք մեր բծաւորեցան. և անունն, որ կոչեցաւ 'ի վերայ մեր՝ գրեթէ անարգեցաւ. և ազատք մեր զարհամարհանս կրեցին. և քահանայք մեր այրեցան. և ղևտացիք մեր 'ի գերութիւն վարեցան. և կուսանք մեր ապականեցան, և կանայք բռնաբարեցան. և արդարք մեր յափշտակեցան. և մանուկք մեր կորեան. և երիտա-

սարդք մեր ծառայեցին, և հզօրք մեր տկարացան. 23 *Եւ որ ամենեցուն մեծագոյնն՝ նշանաւորն սիոն. քանզի դերահռչակեալ է վասն փառաց իւրոց. զի և մատնեալ է 'ի ձեռս այնոցիկ՝ որք ատեցին զմեզ. 24 *Արդ՝ դու 'ի բաց թօթափեա զտրտմութիւն քո զբազում. և 'ի բաց ընկեա 'ի քէն զբազմութիւն կսկծանաց. և վերաքաւեսցէ զքեզ հզօրն. և զհանգիստ արասցէ քեզ բարձրեալն, զհանգստութիւն աշխատանաց. 25 *Եւ եղև մինչ խօսէի առ նա, երեսք նորա փայլէին յանկարծ, և տեսիլն. ճառագայթեալ լինիւր տեսութիւն նորա. զի եղէ ապշեալ յոյժ առ այն. և խորհէի զի՞նչ արդեօք լինիւր այս. 26 *Եւ ահա յանկարծակի ընդարձակեաց զհնչումն ձայնի զմեծ՝ երկիւղիւ լի. մինչ զի դղրդայր երկիր 'ի կնոջ հնչմանէն. և տեսի. 27 *Եւ ահա, այլ ևս կին ոչ երևիւր ինձ. այլ քաղաք կառուցանիւր՝ և տեղի ցուցանիւր 'ի հիմանց մեծաց. և երկեայ, և աղաղակեցի ձայնիւ մեծաւ, և ասացի. 28 *Ո՞ւր է ուրիէլ հրեշտակ. որ 'ի սկզբանէ եկն առ իս. քանզի նա արար զիս գալ բազմութեամբ 'ի զարմացումն միտաց այսոցիկ. և եղև վերջն իմ յապականութիւն, և աղօթք իմ 'ի նախատինս. 29 *Եւ իբրև խօսէի ես զայսոսիկ. եկն առ իս, և ետես զիս. 30 *Եւ ահա էի եդեալ իբրև մեռեալ. և իմացումն իմ օտարացեալ էր. և կալաւ զաջ իմ. և զօրացոյց զիս. և կացոյց զիս 'ի վերայ ոտից իմոց. և ասաց ինձ. 31 *Զի՞նչ է քեզ. և զմէ՞ վրդովեալ է իմացումն քո. և զգայութիւն սրտի քոյ. և ո՞յր աղագաւ վրդովիս. և ասացի. 32 *Սի զի թողեր զիս. և ես իսկ արարի ըստ բանից քոց և ելի 'ի դաշտ. և ահա տեսի, և տեսանեմ, զոր ոչ կարեմ ճառել. և ասաց առ իս. 33 *Կա՛ց իբրև զայր՝ 34 և յուշ արարից քեզ. և ասացի. *Խօսեա՛ց դու Տէր իմ առ իս. մի՛ թողուր զիս. զի մի՛ 35 'ի զուր մեռայց. *Քանզի տեսի, զորս ոչ 36 գիտէի. և լսեմ, զորս ոչ գիտեմ. *Կամ մի թէ զգայարան իմ պատրի. և հոգի իմ 37 երազանայ. *Արդ՝ այժմ աղաչեմ զքեզ. զի ցուցցես ծառայի քոյ, սակս զարմացմանս այսորիկ. և պատասխանեաց առ իս, 38 և ասաց. *Լուր ինձ, և ուսուցից քեզ. և ասացից քեզ յաղագս որոց երկնչիս. քանզի բարձրեալն բացայայտեաց քեզ զխորհուրդս 39 բազումս. *Նա տես զճանապարհ քո զուղիղ. քանզի թարց միջարկութեան տրտմէիր վասն ժողովրդեան քոյ. և կարի սգաս վասն 40 սիոնի. *Արդ՝ այս է իմացուած տեսլեանն՝ 41 որ երևեցաւ քեզ սակաւուք. *Զկինն զոր տեսեր զողբացող. սկսար մխիթարել զնա. 42 *Բայց այժմ արդէն զտեսակ կնոջ ոչ տեսանես. այլ երևեցաւ քեզ քաղաք յօրինել. 43 *Եւ քանզի պատմէր քեզ սակս անկմանն որդւոյ իւրոյ. այս է վերալուծութիւն.

*Այս

44 *Բայց կին, զոր տեսեր, է սիոն: և քանզի ասաց քեզ. առ որ և այժմ ակնարկեցես. իբրև 'ի քաղաք շինեալ: 45 *Եւ քանզի ասաց քեզ, զի ամուլ եղև երեսնօք ամօք. վասն որոյ էին ամք, այսինքն, երեսուն, յորժամ ոչ գոյր 'ի նմա դեռևս մատուցումն մատուցեալ: 46 *Եւ եղև յետ երեսնից ամաց, շինեաց սողոմոն զքաղաքն, և մատոյց զմատուցմունս. յայնժամ եղև՝ երբ ծնաւ ամուլն զորդի: 47 *Եւ այն զոր քեզ ասաց. քան զի սնոյց զնա հանդերձ աշխատութեամբ, այս էր բնակութիւն յերուսաղէմ: 48 *Եւ քանզի ասաց քեզ. եթէ որդին իմ եկեալ յառագաստ իւր մեռաւ. և դիպաւ նմա անկումն. այս էր, որ եղև. յափշտակութիւն երուսաղէմի: 49 *Եւ ահա տեսեր զնմանութիւն նորա՝ և զի զորդին ողբայր՝ սկսար մխիթարել զնա, և յաղագս այսոցիկ որք դիպեցան, այսոքիկ էին քեզ արտայայտելիք: 50 *Եւ այժմ տեսանէ բարձրեալն՝ քանզի յանձնէ ես տրտմեալ. և քանզի 'ի բոլորանդամն սրտէ վշտանաս վասն նորա. եցոյց քեզ զպայծառութիւն փառաց նորա. և զգեղեցկութիւն շքեղութեան: 51 *Զի և վասն այնորիկ ասացի քեզ՝ զի մնասցես 'ի դաշտի ուր տուն ոչ է կառուցեալ: 52 *Քանզի գիտէիր՝ զի բարձրեալն սկսանիւր քեզ ցուցանել զայսոսիկ: 53 *Վասն այնորիկ ասացի քեզ. զի եկեսցես յագարակ, ուր ոչ գոյ հիմն շինութեան: 54 *Վասն զի և ոչ կարէ գործ արուեստաւորի մարդոյ տանիլ 'ի տեղւոջն, ուր սկսանիւր բարձրելոյն քաղաք՝ ցուցանիլ: 55 *Բայց դու մի երկնչիր՝ որ և ոչ սպանանուցու սիրտ քո. այլ մուտ, և տես զպայծառութիւն և զմեծութիւն շինուածոյն. որքան պարունակութիւն է քեզ տեսութեան աչաց քոց տեսանել: 56 *Եւ զկնի այսորիկ լուիցես, որքան պարունակէ լսարան ունկանց քոց լսել: 57 *Զի դու երանելի ես քան զբազումս. և կոչեցեալ ես առ բարձրեալն՝ որպէս և սակաւքն: 58 *Բայց 'ի գիշերի, որ 'ի վաղիւն հանդերձեալ է՝ մնասցես աստ: 59 *Եւ եցոյց քեզ բարձրեալն զայսոսիկ զտեսիլս յետնագունից, զոր կատարեսցէ բարձրեալն. սոքօք որք բնակեալ են 'ի վերայ երկրի յաւուրս յետինս: 60 *Եւ ննջեցի 'ի գիշերոջն յայնմիկ. և 'ի միւսումն, որպէս ասաց ինձ:

## ԳԼ: ԺԱ:

1 Եւ տեսի զերազ. և ահա ելանէր 'ի ծովէ արծուի, որոյ էին երկոտասան թևք փետրոց, և գլուխք երեք: 2 *Եւ տեսի, և ահա տարածանէր զթևս իւր յամենայն երկիր, և ամենեքեան հողմք երկնի ներաշնչէին առ նա՝ և շարահաւաքէին: 3 *Եւ տեսի, և 'ի փետրոց նորա շառաւիղէին ներհակականք փետուրք, և ինքեանք լինէին նոր փետրակացն փոքունց և նուաղից: 4 *Զի գլուխք նորա էին հանդուցեալք. և կէս գլուխն նորա էր մեծագոյն քան զայլ գլուխսն. բայց ինքն զետեղիւր ընդ նոսա: 5 *Եւ տեսի, և ահա արծուին թռուաւ փետրօք իւրովք՝ և թագաւորեաց 'ի վերայ երկրի. և 'ի վերայ նոցա 6 որք բնակեալ են 'ի նոսա: *Եւ տեսի, զի ենթանկեալք էին նմա ամենեքեան 'ի ներքոյ երկնի. և ոչ ոք նմա ընդդէմ ասէր. որ և ոչ միոք 'ի ստեղծուածոց՝ որք են 'ի վերայ երկրի: 7 *Եւ տեսի, և ահա յարեաւ արծուին 'ի վերայ ճիրանաց իւրոց. և արձակեաց զձայն թևրոց իւրոց, ասելով: 8 *Մի ամենեքեան 'ի միասին հսկէք. ննջեցէք իւրաքանչիւրոք ներ տեղւոջ իւրում; և 'ի ձեռն ժամանակի 9 հսկեցէք: *Բայց գլուխքն ներ վերջնում 10 պահեսցին: *Եւ տեսի, և ահա ձայն ոչ արտադայր 'ի գլխոց նորա. այլ 'ի միջոյ մարմ- 11 նոյ նորա: *Եւ թուեցի զփետուրս նորա ներհակականս. և ահա ինքեանք էին ութն: 12 *Եւ տեսի, և ահա յաջմէ կողմանէ յարեաւ մի ևս թեպուր. և թագաւորեաց 'ի 13 վերայ երկրի ամենայն: *Եւ եղև իբրև թագաւորէր, եհաս նմա վախճան. և ոչ երևեցաւ տեղի նորա. և հետևակն առ յարեաւ՝ և թագաւորէր. ինքն զբազում կալաւ զժամա- 14 նակ: *Եւ եղև իբրև թագաւորէր, և գայր վախճան նորա. զի ոչ երևիւր իբրև զառա- 15 ջինն: *Եւ ահա ձայն առաքեաւ առ նա, 16 ասելով: *Լուր դու՝ որ այդքան ժամանակս կալար զերկիր: զայսոսիկ քեզ ծանուցեմ նախ քան զսկսանիլն քո ոչ երևիլ: 17 *Ոչ ոք զկնի քո կալցէ զժամանակ քո. այլ և 18 ոչ զկէս նորա: *Եւ համբարձ զինքն երրորդն, և կալաւ զիշխանութիւն որպէս և նախ- 19 կինքն՝ և ոչ երևեցաւ և նա: *Եւ այսպէս հանդիպիւր այլոցն ամենեցուն առանձնաբար զպետութիւն կալնուլ. և վերստին ոչ 20 երբէք համեմատել: *Եւ տեսի, և ահա 'ի ժամանակի հետևեալքն բռունք կանգնէին յաջմէ կողմանէ, զի կալցին և ինքեանք զպետութիւն: և յայսցանէ էին, որք կալնուին. բայց սակայն փութանակի ոչ երևէին: 21 *Զի և այլք ոմանք 'ի սոցանէ կանգնէին, 22 այլ ոչ կալնուին զպետութիւն: *Եւ տեսի յետ այսորիկ. և ահա ոչ երևեցան երկոտասան փետուրքն, և երկու փետրիկքն: 23 *Եւ ոչինչ վերամնայր 'ի մարմնոյ արծուոյն, եթէ ոչ երկու գլուխքն հանգուցեալք, 24 և վեց փետրիկքն: *Եւ տեսի և ահա 'ի վեցից փետրկացն բաժանեցան երկուքն. և մնացին ենթ գլխոյն, որ է առ աջակողմն, զի չորքն մնացին 'ի տեղւոջ իւրեանց: 25 *Եւ տեսի. և ահա թևատակքն խորհէին զինքեանս ուղղել՝ և ըմբռնել զպետութիւն: 26 *Եւ տեսի, և ահա մինն ուղղեցաւ՝ այլ 27 փութով ոչ երևեցաւ: *Եւ երկրորդքն արագագոյնս քան զառաջինսն ոչ երևեցան: 28 *Եւ տեսի, և ահա երկուքն, որք յաղթեցին. առ ինքեանս խորհէին, և ինքեանք

Թա_

թագաւորել: 29 *Եւ այնու մինչ խորհէին · ահաւասիկ մինն համդուցելոցն գլխոյ՝ որ էր կէս՝ հսկեր, զի այս էր երկուց գլխոցն մեծագոյն: 30 *Եւ տեսի, զի շաղապլրացան երկու գլուխքն ընդ ինքեան: 31 *Եւ ահա դարձաւ գլուխն ընդ նմ, որք ընդ նմա էին. և եկեր զերկուս թեւատակսն, որք խոկային թագաւորել: 32 *Իսկ գլուխս այս կարի երկեցոյց զամ զերկիր. և տիրեր 'ի նմա այնոցիկ, որք բնակին յերկրի համդերձ աշխատութբ բազմաւ. և զկարողութն կալաւ ոլորտի երկրաց 'ի վերայ ամենեցուն թեւոց՝ որք եղեն: 33 *Եւ տեսի զկնի այսորիկ՝ և ահա կէս գլուխն յանկարծակի ոչ երեւիր. և սա ոպ թեւքն: 34 *Բայց յաղթեցին երկու գլուխքն, որք և ինքեանք նմանապէս թագաւորեցին 'ի վր երկրի. և 'ի վր այնոցիկ՝ որք բնակին 'ի նմա: 35 *Եւ տեսի, և ահա եկուլ գլուխն յաջմէ կողմանէ զայն, որ 'ի ձախմէն: 36 *Եւ լուայ զձայն ասացեալ ինձ. հայեաց ընդդէմ քեզ, և խոկա զորինչ տեսանես: 37 *Եւ տեսի, և ահա ոպ առիւծ խռովեալ յանտառէ գոչելով: և տեսի, զի արձակեր զձայն մարդոյ առ արծուին. և ասաց ասելով: 38 *Լուր դու, և խօսեցայց առ քեզ. և ասէ բարձրեալն քեզ: 39 *Ոչ ապաքէն դու ես, որ վերացար 'ի չորից կենդանեացն, զորս արարի թագաւորել յաւիտենի իմոյ. և զի 'ի ձեռն նոցա եկեսցէ վախճան ժամանակաց նոցա: 40 *Եւ չորրորդն եկեալ յաղթեաց ամնյուն կենդանեացն, որք անցին. և կարողութբ կալաւ զյաւիտեան համդերձ ահիւ բազմաւ: և զամ զտիեզերս համդերձ աշխատութբ չարագունիւ, և բնակեցաւ այս քան ժամանակօք 'ի տիեզերս երկրաց համդերձ նենգութբ: 41 *Եւ դատեցեր զերկիր ոչ համդերձ ճշմարտութբ: 42 *Զի նեղեցեր զհեզս. և խախտեցեր զհանդուցեալս. և սիրեցեր զսուտս. և աւերեցեր զբնակութիւնս նց՝ որք զպտուղս տային. և խոնարհեցուցեր զպարիսպս նց, որք քեզ ոչ նենգեցին: 43 *Եւ ել անարգանք քո մինչեւ առ բարձրեալն, և ամբարտաւանութի քո առ հզօրն: 44 *Եւ հայեցաւ բարձրեալն 'ի ժամանակս հպարտացեալս՝ և ահա վերջացեալք էին: և անօրէնութիւնք նց առլցեալք էին: 45 *Վս այնորիկ ոչ երեւեսցիս դու արծուի, և թեւքքո ահարկուք: և թեպուրիկք քո չարագոյնք. և գլուխք քո չաբոյղք. և ճիրանք քո կարիչարք. և ամ մարմին քո ընդունայն: 46 *Զի ապահովասցի ամ երկիր. և անդրադարձցի ազատեալ 'ի քէն բռնութբ: և յուսասցի յիրաւունս և յողորմութին նր, որ արար զնա:

## ԳԼ: ԺԲ:

1 Եւ եղեւ մինչ խօսէր առիւծն զբանս զայսոսիկ առ արծուին, և տեսի:

Ձխ Թ

2 *Եւ ահա որ զօրանայրն գլուխն. և ոչ երեւեցան չորք թեւքն այնոքիկ. որք առ նա անցեալ գնացին. և կարգեցան 'ի թագաւորել. և էր թագաւորութի նոցա տարագրեալ 3 և վրդովմամբ լցեալ: *Եւ տեսի, և ահա ինքեանք ոչ երեւէին. և ամ մարմին արծուոյն հրդեհիւր. և պակնոյր երկիր կարի. և ես 'ի վրդովմանէ, և 'ի զարմացմանէ մտացս՝ և 'ի մեծէ երկիւղէ զարթեայ. և 4 ասացի հոգւոյ իմոյ: *Ահաւասիկ դու նախակացուցեր ինձ զայս նայում, զի քննես 5 զճանապարհս բարձրելոյն: *Ահա արդէն լքեալ գոմ անձամբ՝ և հոգւով իմով տկարացեալ եմ յոյժ. և ոչ դուզնաքեայ գոյ յիս զօրութի յերկիւղէ բազմէ, զոր պա6 կեայ յայսմ գիշերոջ: *Արդ՝ այժմ աղօթեցից առ բարձրեալն, զի զիս զօրացուսցէ մինչեւ 'ի վախճան: 7 *Եւ ասացի, տէր Տր. թէ գտի զշնորհ առաջի աչաց քոց. և թէ արդարացայ առ քեզ 'ի վեր քան զբազումս. և թէ ստուգիւ ելին մաղթանք իմ 8 առաջի երեսաց քոց, *Զօրացո զիս, և ցոյց ծառայի քոյ, ինձ, զթարգմանութի, և զորոշումն տեսլեանս այսորիկ սոսկալւոյ. զի լրագունաբար մխիթարեսցես զանձն 9 իմ: *Զի զիս արժանի վարկար ցուցանել ինձ զյետնորդս ժամանակաց: և ասաց առ 10 իս: *Այս է թարգմանութիւն տեսլեանս 11 այսորիկ: *Զարծուին, զոր տեսեր ելեալ 'ի ծովէն. այս է թագաւորութին, որ ցուցաւ 'ի տեսլեան դանիելի եղբօր քոյ: 12 *Բայց ոչ թարգմանեցաւ նմա. քանզի ես 13 այժմ քեզ թարգմանեմ: *Ահա աւուրք եկեսցեն, և յարիցէ թագաւորութի 'ի վր երկրի, և եղիցի երկիւղ դառնագոյն ամենեցուն թագաւորութեց, որք եղեն նախ 14 քան զնա: *Այլ թագաւորեսցեն 'ի նմա թագաւորք երկոտասանք, մի զկնի միոյ: 15 *Զի երկրորդն սկսանիցի թագաւորել. և ինքն կալցէ զաւելի զժամանակ քան զեր16 կոտասանսն: *Այս է թարգմանութիւն երկոտասանից թեւոցն, զորս տեսեր: 17 *Եւ զոր լուար զձայն, որ խօսեցաւ՝ ոչ 'ի գլխոց նր արտաքսեալ՝ այլ 'ի միջոյ մարմնոյ 18 նորա: *Այս է թարգմանութի, քանզի զկնի ժամանակի թագաւորութե նր շառաւիղեսցին հակառակութիք ոչ սակաւք. և վտանկեսցի, զի անկցի: և ոչ անկցի յայնժամ, այլ կրկին կացուցեալ լիցի ներ19 իւրում բնոյ: *Եւ քանզի տեսեր թեւատակս ութն շարայարեալս թեւոյ նորա: 20 *Այս է մեկնութին, յարիցեն նայնմ թագաւորք ութն. որոց իցեն ժամանակք թեթեւք, և ամք կարճառօտք. և երկուքն 21 իսկ 'ի նոցանէ կորիցեն: *Բայց մերձենալով ժամանակի կիսոյն, չորքն պահեսցին 'ի ժամանակին. երբ սկսանիցի մերձենալ ժամանակ նր՝ զի վերջասցի, իսկ երկուքն

՚ի վերջին պահեսցին։ 22 * Եւ քանզի տեսեր զգլուխս երիս հանգուցեալս։ 23 * Այս է թարգմանութիւն, ներ վախճանից նորա բազումհարցէ բարձրեալն զերից թագաւորութեանց. և վերակոչեսցէ առ նոսա զբազումս. և տիրեսցեն երկրի։ 24 * Եւ որք բնակեան ՚ի նմա, հանդերձ աշխատութեամբ բազմաւ, ՚ի վեր քան զամենեսեան, որք եղեն նախ քան զնոսա։ Վասն որոյ նոքեանք կոչեցան գլուխք արծուոյն։ 25 * Զի նոքա եղիցին, որք գլխաւորեն զամբարշտութիւն նորա. և որք որք կատարեսցեն զյետնաւագոյնս նորա։ 26 * Եւ քանզի տեսեր զգլուխն մեծագոյն ոչ երևեալ՝ այս է մեկնութիւն նորա. քանզի մինն ՚ի նոցանէ ՚ի վերայ մահճի իւրոյ մեռցի՝ և սակայն հանդերձ տանջանօք։ 27 * Զի երկուքն որք յարատևեսցին, սուր կերիցէ զնոսա։ 28 * Զի սուր միոյն կերիցէ զմիւսն, որ ընդ նմա. բայց սակայն սա սրով առ ՚ի յետնորդացն անկանի։ 29 * Եւ զի տեսեր երկուս թևատակս արտաձգեալս ՚ի վերայ գլխոյն, որ է յաջմէ կողմանէ։ 30 * Այս է թարգմանութիւն. նոքա են զորս պահեաց բարձրեալն ՚ի վախճան իւր. այս է թագաւորութիւն տարադրեալ և ամբոխմամբ լցեալ։ 31 * Որպէս տեսեր, և զառիւծն, զոր տեսեր յանտառէն զարթուցեալ. և գոչեցեալ. և խօսեցեալ առ արծուին՝ և յանդիմանեալ զնա, և զանիրաւութիւնս նորա, ՚ի ձեռն ամենայն խօսից նորա՝ որպէս լուար։ 32 * Այս է հողմն, զոր պահեաց բարձրեալն ՚ի կատարածի առ նոսա՝ և առ յանդգնութիւնս իւրեանց. և յանդիմանեսցէ զնոսա. և թօթափեսցէ առաջի նոցա զլկումն նոցա։ 33 * Զի կացուսցէ զնոսա ներ իրաւանց կենդանիս։ և եղիցի, յորժամ յանդիմանեսցէ զնոսա. յայնժամ ապականեսցէ զնոսա։ 34 * Զի զմնացեալ զժողովուրդն իմ փրկեսցէ հանդերձ գթութեամբ, որք կեցին ՚ի վերայ վախճանից իմոց. և բերկրեցուսցէ զնոսա մինչև եկեսցէ վախճան, օր դատաստանի. յաղագս որոյ խօսեցայ ընդ քեզ ՚ի բնէ։ 35 * Այս երազ է զոր տեսեր. և այսոքիկ մեկնութիւնքն։ 36 * Արդ՝ դու միայն արժանի եղեր գիտել զխորհուրդս զայս բարձրելոյն։ 37 * Արդ՝ գրեա զայսոսիկ զամենեսեան՝ զորս տեսեր՝ ՚ի մատենի, և դիր զնոսա ՚ի տեղւոջ թաքստեան։ 38 * Եւ ուսուսցես զնոսա իմաստնոց ՚ի ժողովրդենէ քումմէ. որոց զսիրտս գիտես կարող գոլ ըմբռնել. և պահել զխորհուրդս զայսոսիկ։ 39 * Իսկ դու դեռևս տևեա աստ զայլ ևս աւուրս եօթն. զի քեզ ցուցցի՝ որինչ տեսիլ եղիցի բարձրելոյն ցուցանել քեզ։ 40 * Եւ չոքաւ յինէն։ և եղև իբրև լուաւ ամենայն ժողովուրդն՝ զի անցին աւուրք եօթն. և ես ոչ դարձայ ՚ի քաղաքն, ժողովեցան ամենեքեան ՚ի միասին ՚ի փոքրագունէ մինչև ցմեծամեծն։ և եկին առ իս, և ասացին ինձ ասելով։ 41 * Զի՞նչ մեղաք քեզ. և զի՞նչ անիրաւաբար գործեցաք ՚ի քեզ։ զի թողեալ զմեզ՝ նստար ՚ի տեղւոջս յայսմիկ։ 42 * Զի դու միայն ՚ի վերևս քան զմեզ յամենեցունց ժողովրդոց. որպէս ողկոյզ յորթոյ. և որպէս ճրագ ՚ի տեղւոջ նսեմում. և որպէս նաւահանգիստ, և նաւ ապրեալ ՚ի մրրկէ։ 43 * Կամ ոչ բաւականանան մեզ չարիքս, որք հանդիպին։ 44 * Արդ՝ եթէ դու զմեզ ՚ի բաց թողուս, որքան մեզ էր բարւոք՝ թէ էաք հրդեհեալք և մեք ընդ կիզմանն սիոնի։ 45 * Վասն զի ոչ մեք լաւագոյնք եմք քան զնոսա, որք անդ մեռան։ և ողբային ձայնիւ մեծաւ։ 46 * Եւ պատասխանեցի առ նոսա, և ասացի. քաջալերեա՛ց իսրայէլ, և մի՛ տրտմիր դու՝ տունդ յակոբայ։ 47 * Զի է յիշատակ ձեր առաջի բարձրելոյն. և հզօրն ոչ է մոռացեալ զձեզ ներ փորձութեան։ 48 * Զի ես ոչ թողի զձեզ. և ոչ յետս դարձայ ՚ի ձէնջ. այլ եկի յայս տեղի. զի մաղթեցից վասն ամայութեան սիոնի, զի հայցեցից զողորմութիւն վասն սարկութեան սրբագործութեան ձերոյ։ 49 * Եւ արդ՝ գնացէք իւրաքանչիւրոք ՚ի ձէնջ ՚ի տուն իւր. և ես եկից առ ձեզ զկնի աւուրցս այսոցիկ։ 50 * Եւ չոքաւ ժողովուրդն որպէս ասացի նմա, ՚ի քաղաքն։ 51 * Իսկ ես նստայ ՚ի դաշտին եօթնմեքք աւուրբք, որպէս ինձ պատուիրեաց։ և ճաշակէի ՚ի ծաղկանց ագարակին միայնակ. ՚ի բանջարաց եղև կերակուր ինձ յաւուրսն յայնոսիկ։

## ԳԼ. ԺԳ.

1 Եւ եղև զկնի աւուրց եօթանց. և երազացայ յերազ գիշերով։ 2 * Եւ ահա ՚ի ծովէ հողմ յառնէր, զի խռովեցուսցէ զամենեսեան զալիս նորա։ 3 * Եւ տեսի, և ահա կարողանայր այրն այն հանդերձ զօրօք երկնի. և ուր զդէմս իւր դարձուցանէր՝ զի դիտեսցէ, սոսկային ամենեքեան, որք ընթ նորա տեսանէին։ 4 * Եւ յամուստեք արտաքս գայր ձայն ՚ի բերանոյ նորա. կիզանէին ամենեքեան, որք լսէին զձայնս նորա. որպէս հանդչի երկիր յորժամ զգայ զհուր։ 5 * Եւ տեսի զկնի այսոցիկ, և ահա ժողովիւր բազմութիւն մարդոց՝ որոց ոչ գոյր թիւ, ՚ի չորից հողմոց երկնի. զի ընդդիմամարտիցին ընդ առն, որ ելանէր ՚ի ծովէն։ 6 * Եւ տեսի, և ահա ինքն ինքեամբ դրօշեաց զսար մեծ, և թռեաւ ՚ի վերայ նորա։ 7 * Իսկ ես խնդրեցի տեսանել զնահանգն կամ զտեղին, ուստի դրօշեցաւ սարն. և ոչ կարացի։ 8 * Եւ յետ այնորիկ տեսի, և ահա ամենեքեան, որք ժողովեցան առ նա, զի մարտիցին ընդ նմա՝ երկնչէին յոյժ. սակայն համարձակէին մարտնչիլ։ 9 * Եւ ահա, իբրև ետես զյանդուգն յարձակումն բազմութեան եկողին՝ ոչ համբարձ զձեռն իւր՝ և ոչ զնիզակ ունէր, և ոչ զայլ ինչ զանօթ պատերազմի. եթէ ոչ միայ-

միայնակ զկարգ տեսլի։ 10 *Վասնզի եհան 'ի բերանոյ իւրմէ՝ որպէս զշնչումն հրոյ. և 'ի շրթանց նր հոգի բոցոյ. և 'ի լեզուէ իւրմէ առաքկաներ զկայծակունս և մրրիկս. և շարախառնեցան ամենեքեան 'ի միասին. այս է շնչումն հրոյ՝ և հոգի բոցոյ՝ և բազմութի մրրկի։ 11 *Եւ անկաւ 'ի վերայ բազմութեն դիմեցմամբ, որ նախապատրաստեալ էր պատերազմիլ՝ և այրեաց զամենեսեան, զի յանկարծակի ոչինչ տեսանիւր յանթուոյ բազմութէն, եթէ ոչ միայնակ փոշի՝ և ծխոյ հոտ։ և տեսի, և երկեայ։

12 *Եւ զկնի այսորիկ տեսի զինքն զմարդն իջեալ 'ի լեռնէն, և կոչեալ առ ինքն զբազմութի զայլ զխաղաղարար։ 13 *Եւ մերձենային առ նա երեսք մարդոց բազմաց. ոմանց ուրախացելոց. և ոմանց տրտմեցելոց. իսկ ոմանք կապեալք. ոմանք առածեալք 'ի նոցանէ՝ որք մատուցանեին. և խօթացայ 'ի բազմութէ պակուցմանն. և զարթեայ, և ասացի։ 14 *Դու 'ի բնէ նշանակեցեր ծառայի քոյ զսքանչելիս զայսոսիկ. և արժանի զիս վարկար՝ զի ընկալցիս զպաղատանս իմ։

15 *Եւ այժմ նշանակեա ինձ արդէն զմեկնութի երազոյս այսորիկ. 16 *Զի ըստ վարկանիմ ներ զգայման իմում. վայ որք թողանիցին յաւուրսն յայնոսիկ. և բազում առաւել վայ այնոցիկ՝ որք ոչ են թողեալք։

17 *Զի որք ոչ են թողեալք, տրտումք էին։ 18 *Իմանամ այժմ որք են վերադրեալք յաւուրս յետինս, և հանդիպին նց. նաև սոցա՝ որք թողեալք են։ 19 *Զի մն այսորիկ գտին 'ի մեծի վտանգում՝, և զհարկաւորութիս բազումս. ըստ ցուցանեն երազքս այսոքիկ։

20 *Սակայն դիւրին է տագնապեցելոյն գալ առ այս՝ քան անցանիլ. ըստ զամս 'ի կենցաղոյս՝ և այժմ տեսանել, որք հանդիպին 'ի վախճանի. և պատասխանեաց առ իս՝ և ասաց։ 21 *Եւ զմեկնութի տեսլեանն ասացից քեզ. և սակս որոց խօսեցեալես՝ բացատրեցից քեզ։ 22 *Վասնզի վասն այսորիկ ասացեր. որք թողեալք են, այս է թարգմանութին։ 23 *Որ եբարձ զվտանգն այնու ժամանակաւ, սա զինքն պահեաց. որք 'ի վտանգն անկան, այսոքիկ են, որք ունին զգործս և զհաւատ առ հզօրագոյնն։ 24 *Արդ՝ գիտասջիր, զի առաւել երանեալք են, որք թողան. յաւէտ քան զնոսա որք մեռան։

25 *Այսոքիկ թարգմանութիք տեսլեանն. մն զի տեսեր զայրն ելեալ 'ի սրտէ ծովու։

26 *Նա է՝ զոր պահէ բարձրագոյնն բազմօք ամանակօք. որ 'ի ձեռն ինքեան փրկեսցէ զարարածս իւր՝ և ինքն յօրինեսցէ՝ որք թողեալք են։ 27 *Եւ քանզի տեսեր՝ 'ի բերանոյ նր արտաեկեալ իբրև զոգի, զհուր, և զմրրիկ։ 28 *Եւ քանզի ոչ ունէր զնիզակ. և ոչ զանօթ պատերազմի. զի եղծեաց յարձակումն նր զբազմութին, որ եկն առ 'ի պատերազմիլ ընդ նմա. այս է թարգմանութի։

29 *Ահա աւուրք գան. յորժամ սկսանիցի բարձրագոյնն փրկել զնոսա՝ որք 'ի վր երկրի են։ 30 *Եւ եկեսցէ զարհուրումն միտաց 'ի վր նոցա՝ որք բնակեն յերկրի. 31 *Եւ այլք ընդ այլոց խորհեսցին պատերազմիլ. քաղաք ընդ քաղաքի. և տեղի ընդ տեղւոյ. և ազգ ընդդէմ ազգի. և թագաւորութիւն ընդդէմ թագաւորութե։ 32 *Եւ եղիցի, յորժամ եղիցին այդոքիկ. և հանդիպեսցին նշանքդ՝ զորս նախ ցուցի քեզ. յայնժամ յայտնեսցի որդին իմ. զոր տեսեր իբրև զայր ելեալ։ 33 *Եւ եղիցի, յորժամ լուիցեն ամենեքեան ազգք զձայն նորա. և 'ի բաց թողցէ իւրաքանչիւրոք ներ գաւառում իւրում զպատերազմ իւր՝ զոր ունին առ իրեարս։ 34 *Եւ ժողովեսցի 'ի մի բազմութի անթիւ, իբրև զթռչունս գալ՝ և պատերազմիլ ընդ նմա։ 35 *Նայց ինքն կացցէ 'ի վր կատարի լերինն սիոնի։ 36 *Իսկ սիոն եկեսցէ, և ցուցցի ամենեցուն պատրաստեալ և շինեալ. ըստ տեսեր զլեառն քանդակեալ թարց ձեռաց։ 37 *Սակայն ինքն որդին իմ յանդիմանեսցէ զորս առ դտին ազգք. զամբարշտութիս նոցա զայնս՝ որք մրրկի մերձ եղեն վասն չարեաց մտածութեց նոցա. և տանջանարանացն՝ որովք սկսեսցին չարչարիլ։ 38 *Որք նմանեալք են բոցոյ. և կորուսցէ զնս թարց աշխատանաց. 'ի ձեռն օրինին որ նմանեալ է հրոյ։ 39 *Եւ զի տեսեր զնա ժողովեալ առ ինքն զայլ իմն զբազմութի զխաղաղարար։ 40 *Սոքա են տասն ցեղքն, որք գերեցան յերկրէ իւրեանց յաւուրս օսիայ արքայի. զոր գերեվարեաց սաղմանասար արքայ ասորեաց. և անդրաբերեաց զնոսա յայնկոյս գետոյն. և արտասահմանեցան յերկիր օտար։ 41 *Այլ ինքեանք ինքեանց եառուն զխորհուրդս զայս՝ զի թողցեն զբազմութի ազգաց. և չուեսցեն յայնկոյս գաւառին. ուր ոչ երբէք բնակեցաւ սեռ մարդկան։ 42 *Կամ՝ անդ պահպանել զկտակարանս նորա, զորս ոչ եղեն պահօղք 'ի նահանգին իւրեանց։ 43 *Իսկ ընդ մուտս անձուկս գետոյն եփրատայ 'ի ներս մտին։ 44 *Զի արար նց յայնժամ՝ բարձրեալն զնշանս. և կառեաց կացոյց զերակս գետոյն մինչև անցցեն։

45 *Զի այնու գաւառաւ գոյր ճանապարհ բազում ընթացման՝ տարւոյ միոյ և կիսոյ. 46 զի նահանգն այն կոչի արսարեթ։ *Յայնժամ բնակեցան անդ մինչև 'ի յետնում ժամանակի. և այժմ դարձեալ երբ ձեռնարկեսցեն գալ, 47 *Դարձեալ բարձրեալն կացուսցէ զերակս գետոյն՝ զի կարասցեն անցանիլ. վասն այսորիկ տեսեր զբազմութի 48 հանդերձ խաղաղութբ։ *Այլ և որք թողեալք են 'ի ժողովրդենէ քումմէ, սոքա են, 49 որք գտանին 'ի մէջ սահմանի իմոյ։ *Արդ՝ եղիցի, երբ սկսանիցի կորուսանել զբազ_

մութեն նոցա՝ որք ժողովեալք են աստ․ հովանաւորեսցէ զնս, որք յաղթահարեսցեն զժողովուրդն։ 50 *Եւ յայնժամ ցուցցէ նց զբազում զյոլովս հրաշս։ 51 *Եւ ասացի ես, Տէր Տր․ զայս ցոյց ինձ, վասն որ տեսի զայրն ելեալ ՚ի սրտէ ծովու։ 52 *Եւ ասաց ինձ՝ որպէս ոչ կարես զայսոսիկ քննել կամ գիտել, որք են ներ խորում ծովու․ այսպէս ոչ կարիցէ ոք ՚ի վերայ երկրի տեսանել զորդի իմ․ կամ զնս, որք ընդ նմա են, եթէ ոչ ՚ի ժամանակի աւուրն։ 53 *Այս է թարգմանութիւն երազոյն, զոր տեսեր․ և վս որոյ լուսաւորեցար աստ միայնակ։ 54 *Զի թողեր զքոյն՝ և շուրջ զիմովն զբաղեցար զօրէնիւն, և խնդրեցեր։ 55 *Զի զկեանս քո կարգաւորեցեր իմաստութեամբ․ և զզգայարանս քո կոչեցեր մայր։ 56 *Եւ վս այնորիկ ցուցի քեզ զվարձս առ բարձրեալն․ զի եղիցի զկնի այլոց երից աւուրց՝ առ քեզ զայլս խօսեցայց, և մեկնեցից քեզ զծանունս, և զզարմանալիս։ 57 *Եւ չուեցի, և անցի ՚ի դաշտն բազմապատկաբար փառաւորելով և գովելով զբարձրեալն․ սակս սքանչելեացն, զորս ՚ի ժամանակս ժամանակս առնէր։ 58 *Եւ քանզի կառավարէ զայն, և որք են ներ ժամանակաց ներբերեալք։ և նստայ անդ երիւք աւուրբք։

## ԳԼ․ ԺԴ․

1 Եւ եղև յաւուրն երրորդի․ և ես նստէի ՚ի ներքոյ կաղնւոյ։ 2 *Եւ ահա ձայն արտաքս ել ընդդէմ իմ ՚ի մորենւոյն, և ասաց․ Եզրաս, Եզրաս․ և ասացի, ահաւասիկ ես, Տր․ և յարեայ ՚ի վերայ ոտից իմոց․ և ասաց առ իս։ 3 *Յայտնելով յայտնեցայ ՚ի վր մորենւոյն․ և խօսեցայ ընդ մովսէսի՝ յորժամ ժողովուրդ իմ ծառայէր յեգիպտոս։ 4 *Եւ առաքեցի զնա․ և հանի զժողովուրդ իմ յեգիպտոսէ՝ և առաջնորդեցի նմա ՚ի վր լերինն սինայի․ և արգելուի զնա առ իս աւուրբք բազմօք։ 5 *Եւ ճառեցի նմա սքանչելիս բազումս․ և ցուցի նմա ժամանակաց զխորհուրդս և զվախճան․ և պատուիրեցի նմա, ասելով։ 6 *Զայսոսիկ զբանս յայտնի արասցես, և զայսոսիկ թաքուսցես։ 7 *Եւ այժմ քեզ ասեմ։ 8 *Զնշանս, զորս բացայայտեցի․ և զերազսն, զորս տեսեր․ և զմեկնութիւնս, զորս դու տեսեր, ՚ի սրտի քում վերադրեա զնոսա։ 9 *Զի դու վերընկալցիս յամենեցունց․ և դարձցիս վերամնացեալ հանդերձ խորհրդով իմով, և հանդերձ նմանօք քովք․ մինչև վերջասցին ժամանակք։ 10 *Քանզի կենցաղս կորոյս զմանկութիւն իւր․ և ժամանակք մերձեցան առ ծերանալ։ 11 *Քանզի յերկոտասան մասունս բաժանեալ է կենցաղս․ և անցեալ գնացին տասներորդքն նր և կէս տասներորդի մասին։ 12 *Բայց վերամնան նմա յետ կիսոյն տասներորդի մասին։ 13 *Արդ՝ յօրինեա զտուն քո․ և խրատեա զժողովուրդ քո․ և մխիթարեա զնուաստս նց․ 14 և պատմեա արդէն զեղծանելն։ *Եւ ՚ի բաց թող ՚ի քէն զխորհուրդս մահացուս․ և ՚ի բաց ընկեա ՚ի քէն զկշիռս մարդկայինս․ և մերկեա ՚ի քէն արդէն զանհաստատ զբնութիւնդ․ և ՚ի բաց դիր ՚ի մի կողմն զվշտացուցիչս քեզ զմտածմունս․ և աճապարեա նշդեհանալ ՚ի ժամանակաց յայսցանէ։ 15 *Զի զորս տեսեր այժմէն պատահեալս դոլ չարիս, վերստին քան զայնս զվատթարագոյնս առնիցեն։ 16 *Զի որքան տկարասցի կենցաղս ՚ի ծերութենէ, այնքան բազմապատկեսցին ՚ի վերայ բնակչացն չարիք։ 17 *Զի հեռացոյց զինքն առաւել ճշմարտութիւն․ և մօտացաւ ստութիւնն։ զի արդէն 18 ճեպէ գալ՝ զոր տեսեր զտեսիլն։ *Եւ պատասխանեցի, և ասացի առաջի քո Տր։ 19 *Զի ահա ես առդնացից, որպէս պատուիրեցեր ինձ․ և խրատեցից զարդենիս զժողովուրդս։ իսկ որք դարձեալ ծնանիցին, ով 20 ոք յուշ արասցէ։ *Արդ՝ եդեալ է կենցաղս ՚ի նսեմութեան, և որք բնակեն ՚ի նմա թարց 21 նշուլի։ *Քանզի օրէնք քո վառեալք են․ վս որոյ ոչոք գիտէ՝ որք ՚ի քէն արարեալք 22 են․ կամ որք սկսանիցեն գործք։ *Զի թէ գտի առ քեզ զշնորհ, առաքեա առ իս զհոգին սբ․ և գրեցից զամ, որինչ եղեալ է ներ յաւիտենում ՚ի բնէ․ որք էին յօրէնս քո գրեալք․ զի կարասցեն մարդիկք գտանել զշաւիղն․ և որք կամիցին կեալ ՚ի վախ-23 ճանի, կեցցեն։ *Եւ պատասխանեալ առ իս ասաց․ գնացեալ ժողովեա զժողովուրդն․ և ասասցես առ նոսա․ զի մի խուզեսցեն 24 զքեզ աւուրբք քառասնօք։ *Բայց դու նախապատրաստեա քեզ սոսս բազումս․ և առ ընդ քեզ զսարեայ՝ զդաբրիայ՝ զսաղեմիայ՝ զեքանոս․ և զասիէլ․ զհնգեսին զայսոսիկ․ որք պատրաստք են առ ՚ի գրել արա-25 գապէս։ *Եւ եկեսցես աստ, և ես լուցանեմ ՚ի սրտի քում զճրագ իմացականին, որ ոչ շիջանիցի՝ մինչև վերջասցին 26 զորս ձեռնարկեսցես գրել։ *Եւ յայնժամ կատարեալ՝ զոմանս հրատարակեսցես․ զոմանս իմաստնոց թաքնաբար բացատրեսցես։ զի ՚ի վաղուեան այսու ժամու ձեռ-27 նարկեսցես գրել։ *Եւ չոգայ, որպէս ինձ պատուիրեաց՝ և ժողովեցի զամ զժողո-28 վուրդն, և ասացի։ *Լուր իէլ զբանս զայ-29 սոսիկ։ *Պանդխտեցան հարքն մեր ՚ի բնէ 30 յեգիպտոս, և փրկեցան անտի։ *Եւ առին զօրէնս կենաց, զոր ոչ պահեցին։ զորով 31 և դուք զկնի նց զանց արարիք։ *Եւ տուաւ ձեզ երկիրն ՚ի վիճակ, և երկիր սիոնի․ և հարքն ձեր, և դուք զանօրէնութիւն արարիք․ և ոչ պահեցիք զճանապարհս՝ զոր 32 պատուիրեաց ձեզ բարձրեալն։ *Եւ ար-

դար

գար դատաւորն, որ է՝ 'ի բաց եբարձ 'ի ձէնջ 'ի ժամանակի՝ զոր պարգեւեալ էր: * 33 Եւ այժմ դուք աստ էք, եւ եղբարք ձեր 'ի ներս 'ի ձեզ են: * 34 Արդ՝ եթէ հրամայեսջիք զգայման ձերոյ՝ եւ վարժեսջիք զսիրտ ձեր, կենդանիք պահիջիք. եւ զկնի մահու ողորմութեան հասանիջիք: * 35 Զի դատաստան զկնի մահու եկեսցէ՝ յորժամ վերակենդանասցուք. եւ յայնժամ՝ արդարոց անուանք երեւեսցին. եւ ամբարշտաց արարեալքն ցուցանիցին: * 36 Արդ՝ առ իս ոչ ոք պատահեսցի, եւ մի՛ վերխուզեսցէ զիս մինչեւ աւուրս քառասուն. * 37 Եւ առի զհինգ դեսին զարսն՝ որպէս պատուիրեաց ինձ, եւ չոգաք 'ի դաշտն՝ եւ մնացաք անդ: * 38 Եւ եղէ 'ի վաղուէեան, եւ ահա ձայն կոչեաց զիս ասելով. Եզրա, բա՛ց զբերան քո, եւ արբ, որով քեզ արբուցանեմ: * 39 Եւ բացի զբերան իմ. եւ ահա բաժակ լի տուեալ լինիւր ինձ. այս էր լի իբրեւ ջրով. բայց գոյն նորա նման հրոյ: * 40 Եւ առի, եւ արբի. եւ այնու, իբրեւ արբի՝ սիրտ իմ վշտանայր իմացողութեամբ. եւ 'ի լանջս իմ՝ առաւելանայր իմաստութիւն. զի հոգի իմ շարապահէր յիշողութեամբ: * 41 Եւ բացաւ բերան իմ, եւ այլ ոչ եւս փակեցաւ: * 42 Բարձրեալն ետ զիմացումն հնգից արանցն, եւ գրեցին, որք ասէին զարմացմունս գիշերոյ՝ զորս ոչ գիտէին: * 43 Բայց 'ի գիշերոջ ուտէին զհաց. իսկ ես 'ի տուընջեան խօսէի, եւ 'ի գիշերոջ ոչ լռէի: * 44 Սակայն գրեցան 'ի ձեռն աւուրց քառասնից՝ գիրք երկերիւր եւ չորս: * 45 Եւ եղեւ յորժամ՝ շարալրացան աւուրք քառասունն՝ խօսեցաւ Բարձրեալն, ասելով: զնախորդսն զորս գրեցեր՝ 'ի յայտ կացո եւ ընթերցցին արժանաւորք եւ անարժանք: * 46 Իսկ զյետնորդսն եօթանասունս պահեսցես. զի առաւարեսցես զնոսա իմաստնոց 'ի ժողովրդենէ քումմէ: * 47 Քանզի ներ սոցա է երակ իմացողութեան. եւ իմաստութեան աղբիւր՝ եւ գիտութեան գետ. եւ արարի այնպէս:

## ԳԼ. ԺԵ.

Ահա խօսեա՛ց յականջս ժողովրդեան 1 իմոյ զգրեցս մարգարէութեան, զորս առարկից 'ի բերան քո՝ ասէ Տր: * 2 Եւ արա՛, զի 'ի քարտէսի գրեսցին. քանզի հաւատարիմք եւ ճշմարիտք են: * 3 Մի՛ երկիցես 'ի խորհողաց ներհակ ընդդէմ քեզ. եւ մի՛ ամբոխեսցեն զքեզ անհաւանութիւնք ասողաց: * 4 Քանզի ամ անհաւան ներ անհաւանութեան իւրում մեռցի: * 5 Ահաւասիկ ես ածեմ, ասէ Տր, 'ի վր տիեզերաց զչարիս. զսուր՝ զսով՝ եւ զմահ՝ եւ զսպանումն: * 6 Վասն որոյ վերազօրացաւ անօրէնութիւն 'ի վերայ ամի երկրի. եւ առլցան գործք վնասակարութեց նոցա: * 7 Վասն այսորիկ ասէ Տէր: * 8 Արդէն ոչ լռեցից սակս ամբարշտութեց նոցա, որք անպարկեշտութբ առնեն. եւ ոչ տեւեցից նց, որք անիրաւաբար կրթեն. ահաւասիկ արիւն անմեղ եւ արդար բողոքէ առ իս. եւ հոգիք արդարոց աղաղակեն յաբաժամ: * 9 Խնդրելով խնդրեցից զվրէժ 'ի նոցանէ, ասէ Տր. եւ առից զամ զարիւն անմեղաց 'ի նոցանէ առ իս: * 10 Ահա ժողովուրդ իմ իբրեւ զհօտ 'ի սպանումն վարի. արդէն ոչ տարայց զայն բնակիլ յերկրին եգիպտոսի: * 11 Այլ հանից զնա ձեռամբ հզօրիւ. եւ բազկաւ բարձու. եւ հարից հարուածօք իբրեւ նախ: եւ ապականեցից զամ զերկիր նորա: * 12 Ողբասցէ եգիպտոս. եւ եւ հիմունք նորա հարուածով կափեալ. եւ խոշտանկանօք՝ զորս առածիցէ նմա Ա.Ծ: * 13 Ողբասցեն շինականք եւ երկրագործք. քանզի պակասեսցին սերմանք նց 'ի խորշակէ, 'ի կարկտոյ, եւ յաստղահարէ ահարկուէ: * 14 Վա՜յ յաւիտենի, եւ որք բնակեն 'ի նմա: * 15 Քանզի եհաս սուր, եւ սպանումն նոցա: եւ յարիցէ ազգ ընդդէմ ազգի առ 'ի մարտ: եւ դայխումն 'ի ձեռս նց: * 16 Զի եղիցի անհաստատութիւն մարդկան, եւ այլք այլովք անկարացեալք ոչ բժշկեսցեն ըզթագաւորս իւրեանց: եւ իշխան ճանապարհի կազմածոց իւրոց կարողութբ իւրով: * 17 Զի ցանկասցի մարդ գնալ 'ի քաղաքն, եւ ոչ կարասցէ: * 18 Քանզի վն հպարտութեան նց քաղաքք վրդովեսցին. տունք քայքայեսցին, մարդիկք զահի հարկանիցին: * 19 Ոչ ողորմեսցի մարդ մերձաւորի իւրոյ, առ 'ի խախտել զտունս նոցա 'ի սուր. առ 'ի աւարի հարկանել զտացուածս նց վասն սովու հացի, եւ տառապանաց բազմաց: * 20 Ահա ես կոչեմ. ասէ Ա.Ծ զամն զթագաւորս երկրի առ 'ի պատկառիլ յինէն, որք են յարեւելից, եւ 'ի հարաւոյ, եւ յարեգակնակացէն, եւ 'ի լիբանանէ. առ 'ի դառնալ յինքեանս, եւ հատուցանել զորս ետուն նց: * 21 Որպէս առնեն մինչեւ ցայսօր ընտրելոց իմոց՝ այնպէս արարից եւ հատուցից 'ի ծոց նոցա: * 22 զայսոսիկ ասէ Տր Ա.Ծ: * Ոչ խնայեսցէ աջ իմ 'ի վերայ մեղաւորաց. ոչ կորասցի աշդէ 'ի վերայ հեղողաց զարիւն զանմեղ 'ի վր երկրի: * 23 Ել հուր 'ի բարկութէ նորա՝ եւ լափեաց զհիմունս երկրի. եւ զմեղաւորս իբրեւ զկորդիւն հրդեհեալ: * 24 Վա՛յ այնոցիկ, որք մեղանչեն. եւ ոչ պահեն զպատուիրանս իմ, ասէ Տր: * 25 Ոչ խնայեցից 'ի նոսա: իջէք որդիք 'ի զօրութէ. մի՛ արատաւորէք զսրբութիւն իմ: * 26 Քանզի ճանաչէ Տր զամենեսեան՝ որք յանցին 'ի նա. վասն այնորիկ մատնեաց զնս 'ի մահ, եւ 'ի սպանումն: * 27 Զի արդէն իսկ եկին 'ի վերայ տիեզերաց երկրի չարիք, եւ բնակեսջիք 'ի նս, զի ոչ փրկեսցէ զձեզ Ա.Ծ: վն որոյ մեղայք առ նա: * 28 Ահաւասիկ տեսիլ սոսկալի. եւ երեսք նորա յարեւելից: * 29 Եւ ելցեն

ծնունդք

ծնունդք վիշապաց արաբիոյ կառօք բազմօք՝ և ոռոց շնչումն, թիւ նոցա տարածանի ՚ի վ՟ր երկրի. զի արդէն երկիցեն, և տապ տապեսցին ամենեքեան, որք զայսոսիկ լուիցեն։ 30 *Կարմնացիք մոլեգինք բարկութ՟բ, և ելցեն իբրև զվարազս յանտառէ. և առ եկեսցեն զօրութ՟բ մեծաւ. և յարակայցեն ՚ի պատերազմ ընդ նոսա. և ապականեսցեն զբաժին երկրին ասորւոց։ 31 *Եւ զկնի այսոցիկ վերակարողասցին վիշապք ծննդեան իւրայինք յիշատակք. և շարադարձուսցեն զինքեանս փչելով զօրութ՟բ մեծաւ առ ՚ի հալածել զնոսա։ 32 *Սոքա ամբոխեսցին, և հանդարտեսցին ՚ի զօրութ՟ե ն՟ց, և դարձուսցեն զոտս իւրեանց ՚ի փախուստ։ 33 *Եւ յադարակացն ասորւոց ենթանստող պաշարեսցէ զնոսա. և սպառեսցէ զմի ՚ի նոցանէ։ և եղիցի երկիւղ և դողումն ներ բանակոջ նոցա. և գրգռութ՟ի ՚ի թագաւորս իւրեանց։ 34 *Ահա ամպ յարևելից և ՚ի հիւսիսոյ մինչև ՚ի հարաւ, և երեսք ն՟ց դաժանք յոյժ լիք բարկութ՟բ և յանդգնութ՟բ։ 35 *Բաղխեսցեն զիրեարս. և բաղխեսցեն զաստղ զփարթամ ՚ի վերայ երկրի՝ և զաստղ ն՟ց. և եղիցի արիւն ՚ի սրոյ մինչև յորովայն։ 36 *Եւ ապաւառ մարդոյ մինչև ՚ի փալան ուղտու. և եղիցի ահ և երկիւղ բազում ՚ի վ՟ր երկրի։ 37 *Եւ տեսկասցին, որք տեսանիցեն զբարկութ՟ին զայն. և դողումն ըմբռնեսցէ զնոսա։ և զկնի այսոցիկ շարժեսցին տարափք յորդք։ 38 *Ի հարաւոյ և ՚ի հիւսիսոյ. և բաժին այլ յարևմտից։ 39 *Եւ յաղթահարեսցեն հողմք յարևելից, և ՚ի բաց լուծցեն զնա. և զամպն, զոր յարուցի բարկութ՟բ, և աստղն առ ՚ի առնել զահիհարումն առ արևելեայն հողմն, և արևմտեայն՝ խախտեսցի։ 40 *Եւ վերասցին ամպք մեծք և կարողք՝ լիք ցասմամբ, և աստղ, զի զարհուրեցուսցեն զա՟մ զերկիր՝ և զբնակեալս ՚ի նմա։ և հեղցեն ՚ի վ՟ր ա՟մի տեղւոյ բարձու և գերազանցի զնշան սարսափելի։ 41 *Հուր, և զկարկուտ, և զաշտէս թռուցեալս, և զջուրս բազումս, մինչ զի լցցին ամենեքեան դաշտք՝ և ա՟մ՟ք առուք լրութ՟բ ջուրց բազմաց։ 42 *Եւ կործանեսցեն զքաղաքս և զպարիսպս. և զլերինս և զբլուրս. և զփայտս անտառաց. և զդալարի բողբոջից. և զցորեանս նոցա։ 43 *Եւ անցեալ գնասցեն կայունք մինչև ՚ի բաբելոն՝ և կասեսցեն զնա։ 44 *Պարագայցեն առ նա. և շրջագայիցեն ՚ի նմա. և առհեղցեն զզարկուցած, և զա՟մ զցասումն ՚ի վ՟ր նորա, և ստորագնասցէ փոշի և ծուխ մինչև յերկինս. և ամենեքեան ներ շրջակայումն լացցեն զնա։ 45 *Եւ որք ենթ նորա մնասցեն, ծառայեսցեն սոցա՝ որք զահիհարան։ 46 *Եւ դու ասիա հաղորդակամ ՚ի յոյսն բաբելոնի և պարծանք անձին նորա։

47 *Վա՜յ քեզ ողորմելի, վ՟ն զի եղեր նմանեցար նմա և զարդարեցեր զդստերս քո ներ պոռնկութ՟ե։ առ ՚ի հաճոյանալ և պարծիլ սիրողօք քովք, որք ե՟ն քեզ տռփացան միշտ պոռնկիլ։ 48 *Ատելութ՟ե առ յարեալ ես ամենեքումբք գործովք ն՟ր. և ներ գիւտից ն՟ր. վասն այնորիկ ասէ Ա՟ծ։ 49 *Առաքեցից առ քեզ չարիս՝ զայրիութ՟ի զաղքատութ՟ի և զսով՝ և զսուր՝ և զմահատարաժամ, առ ՚ի աւարի հարկանել զտունս ձեր ՚ի խախտմանէ, և ՚ի մահոճանէ, և ՚ի պարծանաց զօրութ՟ե քոյ։ 50 *Որպ ծաղիկ թարշամեսցի, յորժամ յարիցէ տապ՝ որ առաքեալէ ՚ի վ՟ր քոյ։ 51 *Տկարասցիս իբրև զաղքատուկ հարուածեալ և բռնաբարեալ ՚ի կանանց. զի մի կարասցեն զքեզ շօշափել կարողքն և սիրողք։ 52 *Ոչ ապաքէն ես այսպէս նախանձեցայց ընդ քեզ՝ ասէ Տէր։ 53 *Մի թէ ո՞չ սպանաներ զընտրեալս իմ նամենում ժամանակօջ. ամբարձեալ զգանուածն ձեռաց, և ասացեալ ՚ի վ՟ր մահու նոցա, երբ արբեցեալ էցէիր։ 54 *Պաճուճեա զտեսակ դիմի քոյ։ 55 *Ոկասպէնս պոռնկութ՟ե քոյ ներ ծոցում քում. վ՟ն այդորիկ զորիտուրն ընդունիցիս։ 56 *Որպ զերեսս ընտրելոց իմոց, ասէ Տ՟ր, այնպէս առնիցէ քեզ Ա՟ծ. և մատնեսցէ զքեզ ՚ի չարիս։ 57 *Եւ ծնունդք քո սովու սատակեսցին. և դու գայխանաւ անկցիս. և քաղաքք քո կործանեսցին. և ամենեքեան քոյայինք ՚ի դաշտի սրով անկցին։ 58 *Եւ ոյք են ՚ի լերինս՝ սովու կորնչիցին. և կերիցեն զմարմինս իւրեանց. և զարիւնն արբցեն, ՚ի սովէ հացի, և ՚ի ծարաւոյ ջրոյ։ 59 *Ատամբախտ ՚ի ձեռն ծովուց եկեսցես, և միւսանգամ առցես զչարս։ 60 *Եւ յանցս կործանեսցեն զքաղաք ապականեալ. և կասեսցեն զբաժին իմն երկրի քոյ. և զմասն փառաց քոց կորուսցեն. վերստին դարձեալք ՚ի բաբելոն հմայատակեցեալ։ 61 *Եւ աղարտեալ՝ եղիցիս նոցա փոխանակ խոռոճոյ, և ինքեանք եղիցին քեզ հուր։ 62 *Եւ կլանիցեն զքեզ, և զքաղաքս քո, զերկիր քո, և զլերինս քո, զամենեսեան զանտառս քո, և զփայտ պտղաբեր հրով այրեսցեն։ 63 *Զորդիս քո ՚ի գերութ՟ի վարեսցեն, և զհարկ քո ՚ի կողոպուտ ունիցին. և զպարծանս երեսաց քոց սպառեսցեն։

## ԳԼ: ԺԶ:

1 Վայ քեզ բաբելոն, և ասիա, վայ քեզ 2 եգիպտոս և ասորիք։ *Արձագեանցք եղերուք. և մոխրամած. և կոծեցէք զուստերս ձեր. և կսկծեցարուք. քանզի 3 մերձեցաւ բեկումն ձեր։ *Առաքեցաւ առ ձեզ սուր. և ո՞վ է, որ դարձուսցէ զայն։ 4 *Առաքեցաւ առ ձեզ հուր. և ո՞վ է, որ 5 շիջուսցէ զայն։ *Առաքեցան առ ձեզ չարիք,

րեք, և ո՞վ է, որ մերժեսցէ զնա։ *Մի՞թէ 6
մերժեսցէ՞ ոք զառիւծ քաղցեալ յանտա-
ռի. կամ շիջուսցէ՞ զհուր ներ խառնում,
առժամայն յորժամ սկսանիցի վառել։
*Մի՞թէ մերժեսցէ՞ ոք զաղեղն 'ի հզօրա- 7
գոյն աղեղնաւորէ ձգեցեալ։ *Տէր հզօր 8
առաքէ զչարիսն, և ո՞վ է, որ 'ի բաց մեր-
ժեսցէ զայն։ *Ել հուր 'ի ցասմանէ նորա, 9
և ո՞վ է՝ որ շիջուսցէ զնա։ *Փայլատակես- 10
ցէ, և ո՞վ ոչ երկնչիցի։ որոտասցէ, և ո՞վ ոք
ոչ պակնուցու։ *Տր՟ սպառնասցի, և ո՞վ ոք 11
ոչ հեղեալ հոսեսցի յերեսաց նր՟։ *Երկիր 12
սարսափեցաւ՝ և հիմունք նր՟. ծով ալեկո-
ծեսցի 'ի խորութե, և ալիք նր՟ վրդովլին.
և ձկունք նր՟ յերեսաց Տն՟. և 'ի փառաց զօ-
րութե՟ նորա։ *Զանզի հզօր է աջ նր՟, որ 13
զաղեղս լարէ. և նետք նր՟ սրեալք. որք 'ի
նմանէ առաքին՝ ոչ պակասեսցին, յորժամ
սկսանիցին արձակել ընդ ծագս երկրի։
*Ահա արձակին չարիք. և ոչ անդրադարձ- 14
ցին, մինչև եկեսցեն 'ի վր՟ երկրի։ *Հուր 15
բորբոքի, և ոչ շիջանի, մինչև սպառեսցէ
զհիմունս երկրի։ *Զոր օրինակ ոչ անդ- 16
րադառնայ նետ ձգեալ՝ յուժեղ աղեղնա-
ւորէ. այսպէս ոչ անդրադառնան չարիք,
որք ձգեսցան յերկիր։ *Վա՜յ ինձ, վա՜յ ինձ. 17
ո՞վ զիս փրկեսցէ յաւուրսն յայնոսիկ։
*Սկիզբն ցաւոց և բազում հեծմանց. սկիզբն 18
սովու և բազում կոտորածի։ սկիզբն պատե-
րազմի, և սասանին կարօղք։ սկիզբն չա-
րեաց, և տագնապեսցին ամենեքեան։
*Եր սոյն զի՞նչ արարից, յորժամ գայ- 19
ցեն չարիք։ *Ահաւասիկ սով՝ և հարուած, 20
և վիշտ, և նեղութի, արկան տանջանք 'ի
մարդութիւն։ *Եւ ներ ամենեցուն սոցա 21
զինքեանս ոչ դարձուսցեն յանօրէնութեց
իւրեանց. և ոչ տանջանաց յիշատակօղք ե-
ղիցին միշտ։ *Ահա, եղիցի տարևորի շա- 22
հաւէտութի 'ի վր՟ երկրի. այնպ՟ զի վար-
կանիցին զինքեանս գոլ ստոյգ խաղաղա-
ցեալ։ և յայնժամ բողբոջեսցին չարիք 'ի
վր՟ երկրի, սուր, սով, և մեծ շփոթումն։
*Զի 'ի սովէ բազումք՝ որք բնակեալք են 23
յերկրի, սատակեսցին. և սուր կորուսցէ
զայլսն, որք վերամնասցեն 'ի սովէն։ *Եւ 24
մեռեալքն իբրև զաղբ ընկեսցին։ և ոչ
իցէ՝ որ մխիթարիցէ զնս։ Զի 'ի բաց թող-
ցի երկիր ամայացեալ. և քաղաք նր՟ 'ի վայր
կործանեսցի։ *Ոչ թողանիցի, որ մշակէ 25
զերկիր, և որ սերմանիցէ զնա։ *Փայտք 26
տացեն զպտուղս, և ո՞վ կթեսցէ զնոսա։
*Խաղող հասուն լիցի՝ և ո՞վ կոխեսցէ զնա։ 27
զի եղիցի տեղեաց լքումն մեծ։ *Զանզի 28
ցանկասցի մարդ զմարդ տեսանել՝ կամ
զձայն նորա լսել։ *Զի թողանիցին 'ի քա- 29
ղաքէ տասն, և երկուք յագարակէ՝ ոյք թա-
քուսցեն զինքեանս ներ տերևախիտ ոստ-
կոց՝ և պատառուածոց վիմաց։ *Զորօրի- 30

նակ թողանին 'ի ձիթաստանի և իւրաքան-
չիւրոց ծառոց երեք կամ չորք ձիթապտ-
31 տուղք։ *Կամ որպէս ներ այգւոջ կթե-
ցելում ճիւք թողանին յայնցանէ՝ որք յօ-
32 ժարաբար զայգին խուզեսցեն։ *Այսպէս
վերաթողցին յաւուրսն յայնոսիկ երեք
կամ չորք 'ի խուզողաց զտունս նց՟ գայի-
33 տոնաւ։ *Եւ թողցի երկիրն աւերակ. և
ագարակք նր՟ մաշեսցին, և ճանապարհք
նր՟, և ամենեքեան շաւիղք նր՟ բուսուսցեն
զփուշս այնու, զի մի՛ անցանիցեն մարդիկք
34 ընդ այն։ *Ողբասցեն կոյսք ոչ ունելով
զփեսայս. ողբասցեն կանայք ոչ ունելով
զարս. ողբասցեն դստերք նց՟ ոչ ունելով
35 զօգնականս։ *Փեսայք նց՟ 'ի պատերազմի
վախճանեսցին, և արք նոցա 'ի սովում ա-
36 զարտեսցին։ *Բայց լուարուք զայսոսիկ,
և ծաներուք զնոսա ծառայք Տն՟։
37 *Ահաւասիկ բան Տն՟, ընկալարուք զնա.
մի՛ աստուծոց հաւատասջիք՝ զորոց ասէ Տր՟։
38 *Ահաւասիկ մերձենան չարիք, և ոչ յամենն.
39 *Զորօրինակ յղի յորժամ ծնանի ներ ըն-
նուն ամսոջ զորդի իւր. մօտանալով ժա-
մու ծննդեան նր՟, նախքան զժամն երկուս
կամ երիս, երկունք շրջապատեն զորովայն
նր՟. և արտաքս եկեալ երախային յորովայ-
40 նէ, ոչ յամեսցեն միով կիտիւ։ *Այնպ՟ ոչ
յամեսցեն չարիք առ 'ի արտադայիլ 'ի վր՟
երկրի. և կենցաղս հեծեսցէ, և ցաւք շուրջ
41 փակեսցեն զնա։ *Լուարուք զբան, ժողո-
վուրդ իմ. պատրաստեցէք զձեզ 'ի մարտ. և
ներ չարեաց այնպէս եղերուք, իբրև պան-
42 դուխտք երկրի։ *Որ վաճառէ, իբրու որ
փախչիցի. և որ գնէ, իբրու որ կորուսանե-
43 լոց իցէ։ *Որ գնէ, իբրու որ զպտուղ ոչ
ըմբռնեսցէ. և որ շինէ, իբրու ոչ բնակե-
44 լոց իցէ։ *Որ սերմանէ, իբրու որ ոչ հնձես-
ցէ. այսպէս և որ զայգի յատէ, իբրու որ ոչ
45 կթելոց իցէ։ *Ոյք ամուսնանան, այնպէս
իբրու զորդիս ոչ առնելոց իցեն. և ոյք ոչ
46 ամուսնանան, այնպ՟ իբրև այրիք։ *Վա՜յ ա-
նորիկ որք աշխատին, առանց պատճառի
47 աշխատին։ *Զի զպտուղս նց՟ այլասեռք
հնձեսցեն. և զգոյութի նց՟ յափշտակեսցեն.
և զտունս կործանեսցեն. և զորդիս նց՟ գե-
րեսցեն. քանզի ներ գերութե և սովում
48 սերեսցեն զծնունդս իւրեանց։ *Եւ որք
վաճառաշահին յափշտակութբ, որքան
յաւէտ զարդարեն զքաղաքս և զտունս
իւրեանց, և զստացուածս և զանձինս իւրն՟։
49 *Այնքան առաւել առնախանձեցայց ընդ
50 նց՟ 'ի վր՟ մեղաց իւրեանց, ասէ Տր՟։ *Զիարդ
նախանձի պոռնիկ ընդ կնոջ պարկեշտի և
51 բարւոյ յոյժ։ *Այնպէս նախանձեսցի ար-
դարութի ընդ անիրաւութե, երբ պճնես-
ցէ զինքն. և ամբաստանեսցէ զնմանէ ա-
ռաջի երեսաց. երբ եկեսցէ որ վրէժխնդրէ
վերախուզելով զամենայն զմեղս 'ի վր՟ երկրի։

*Վ՞

52 *Մի՛ այնուհետեւ մի՛ նմանիք նմա, եւ ո՛չ գործոց նորա: 53 *Քանզի սակաւիկ մի եւս, եւ բառնի անօրէնութիւն յերկրէ. եւ արդարութիւն թագաւորեսցէ 'ի ձեզ: 54 *Մի՛ ասասցէ մեղաւորն զի նքն ոչ գոլ մեղուցեալ. քանզի կայծակն հրոյ վառեսցի 'ի վր գլխոյ նր. որ ասէ, ո՛չ մեղայ առաջի Տն Ա.Ծ եւ փառաց նր: 55 *Ահաւասիկ Տր ճանաչէ զամն գործս մարդկան. եւ զգնացս նց. եւ զխորհուրդս նց, եւ զսիրտս նոցա: 56 *Քանզի ասաց, եղիցի երկիր, եւ եղեւ: եղիցի երկին, եւ եղեւ: 57 *Եւ բանիւ նր աստեղք հիմնեցան. եւ ծանեաւ զհամար աստեղաց: 58 *Որ յուզէ զխորս, եւ զգանձս նոցա. որ չափեաց զծով. եւ զշարակալութն նր: 59 *Որ ներափակեաց զծով 'ի մէջ ջուրց. եւ կախեաց զերկիր 'ի վր ջուրց բանիւ իւրով: 60 *Որ ձգեաց զերկին իբրեւ զխորան, 'ի վր ջուրց հիմնեաց զնա: 61 *Որ ետ յանապատի զաղբիւրս ջուրց. եւ 'ի վր գագաթանց լերանց զլիճս, առ 'ի ներածել զգետս 'ի վերհագունէ վիմէ, զի արբուսցէ զերկիր: 62 *Որ նկարեաց զմարդ, եւ եդ զսիրտ նր 'ի մէջ մարմնոյն, եւ էարկ 'ի նա զհոգի. զկեանս, եւ զիմացուած: 63 *Եւ շնչումն Ա.Ծ ամենակալի, որ արար զամն. եւ խուզէ զամենեսեան զգաղտնիս ներ թաքուցելոց երկրի: 64 *Նա ծանեաւ զգիւտ ձեր. եւ զորս խորհիք ներ սրտից ձերոց. մեղանչելով եւ կամելով ծածկել զմեղս ձեր: 65 *Վասն որոյ Տր խուզելով խուզեաց զամն զգործս ձեր. եւ տարաձգեսցէ զձեզ զամն: 66 *Եւ դուք չփոթեսջիք՝ երբ յառաջ եկեսցեն մեղք ձեր առաջի մարդկան. եւ անօրէնութիք եղիցին, որք դատախազք կացցեն յաւուր յայնմիկ: 67 *Զի՞նչ առնիցէք, կամ զիա՞րդ թաքուցանիցէք զմեղս ձեր առաջի Ա.Ծ եւ հրեշտակաց նորա:

68 *Ահա դատաւոր Ա.Ծ, երկերուք 'ի նմանէ: 'ի բաց կացէք 'ի մեղաց ձերոց. եւ մոռացարուք զանօրէնութիս ձեր արդէն գործել զնոսա 'ի մշտնջենաւորս. եւ Ա.Ծ արտահանեսցէ զձեզ՝ եւ փրկեսցէ յամն նեղութէ: 69 *Քանզի ահա բորբոքեսցի տապ 'ի վերայ ձեր ամբոխի յորդի. եւ յափշտակեսցեն զոմանս 'ի ձէնջ, եւ ջամբեսցեն կռոց զսպանեալսն: 70 *Եւ ոյք համակամեսցին նոցա, եղիցին նոցա 'ի կատականս. եւ յայպանութիւն, 71 եւ 'ի կոխումն: *Զի եղիցի տեղեաց տեղի, եւ 'ի քաղաքս մերձաւորս յարուցումն բազում 'ի վերայ երկիւղածաց Տն: 72 *Եղիցին իբրեւ մոլիք ո՛չ ումեք խնայեալք, առ 'ի յաւար առնուլ՝ եւ ճմլել դեռեւս զերկիւղածս Տն: 73 *Քանզի փճացեսցեն, եւ յաւարի հարկանիցեն զգոյութիս, եւ 'ի տանց իւրեանց զնս արտաքս ընկեսցեն: 74 *Յայնժամ երեւեսցի փորձութի ընտրելոց իմոց՝ իբրեւ զոսկի որ փորձի 'ի հրոյ: 75 *Լուարուք ընտրեալք իմ, ասէ Տր. ահա առ դուռն աւուրք նեղութե, եւ յայնցանէ փրկեցից զձեզ: 76 *Մի՛ երկնչիք, եւ մի՛ տարակուսիք, զի Ա.Ծ դուքս ձեր է: 77 *Եւ որ պահէ զպատուիրանս եւ զհրամանս իմ, ասէ Տր Ա.Ծ. մի՛ հակամիտեսցեն զձեզ մեղք ձեր. եւ մի՛ վերայաւելցեն զինքեանս անօրէնութիք ձեր: 78 *Վայ ոյք անձկանան 'ի մեղաց իւրեանց. եւ ստորածածկին յանօրէնութեց իւրեանց. որպէս ագարակ անձկանայ յանտառէ. եւ փշոք ծածկի շաւիղ նր, առ որով ո՛չ անցանէ մարդ. եւ արտաքսհմանի, եւ արկանի առ 'ի ճարակումն հրոյ:

Վ Ե Ր Ջ:

# ՅԵՐՈՆԻՄՈՍԻ ԱՌԱՋԱԲԱ-ՆՈՒԹԻՒՆ ՍԱՂԱՒԱՐՏԵԱԼ։

ԶՔՍԱՆ ԵՒ ԵՐԿՈՒՍ տառս գոլ առ Եբրայեցիս՝ նաեւ Ասորւոց, եւ քաղդեացւոց լեզուն վկայէ. որ Եբրայեցւոյն ըստ մեծի մասին սահմանակցէ։ զի եւ նոքա զքսան եւ երկու տառս ունին նոյնով հնչմամբ. այլ այլատարազիւք դրոշմամբք։ քանզի սամարացիք զհինգ մատեանս Մովսէսի նոյնքանիւք տառիւք գըծագրեն. կերպիւք միայն եւ նշանախեցիւք տարաձայնեալք։ Եւ՛ ստոյգ է, զի Եզրաս դպիր եւ օրէնսուսոյց, զկնի գերութեանն Եղմի, եւ վերանորոգութե տաճարին ընդ զօրաբաբելիւ, զայլս տառս՝ եգիտ՝ որովք այժմ վարիմք։ զի մինչեւ ցայն ժամանակ Սամարացւոց եւ Եբրայեցւոց նոյնք էին նշանագիրք։ նա եւ 'ի գիրս Թուոց՝ սոյնս այս հաշիւ ենթ հանդիսի ղեւտացւոց եւ քահանայից խորհրդաբար ցուցանի։ Եւ՛ զանուն Տն քառատառ, ներ ոմանց յունականաց մատենից, մինչեւ ցայսօր նախնիւք գրօք արտադրեալ գտանեմք։ Այլ եւ Սաղմոսի երեսներորդ վեցերորդ։ եւ հարիւրորդ տասներորդ։ եւ հարիւրորդ մետասաներորդ։ եւ հարիւրորդ ութեւտասներորդ։ եւ հարիւրորդ քառասներորդ չորրորդ։ թէպէտ զանազանաւ չափու գրին. սակայն նունոյ թուոյ շարահիւսին այբուբենիւ։ Եւ՛ Երեմիայի ողբքն՝ եւ աղօթք նորուն։ Նաեւ Սաղոմոնի ներ վերջնում Առակաց՝ յայնմանէ վայրէ՝ նորուն մասէ. զկին ժրագլուխ եթէ ոք գտցէ. նոյնովք այփաբետիւք կամ տիպիւք համաթուին։ Բայց հինգ տառք կրկնակք են առ Եբրայեցիս։ Կափ. Մեմ. Նուն. Պէ. Սադէ։ զի այլաբար գրին սոքօք սկզբունք եւ միջք բայից. այլապէս աւարտք։ Ուստի եւ հինգ գիրք 'ի յոլովից կրկնակք թուեին. Սամուէլ՝ Մելաքիմ. Դիբրէ հայամիմ. Եզրաս. Երեմիաս, հանդերձ Կինօթիւ, այսէ Ողբովք իւրովք։ Արդ ուրեմն որպ քսան եւ երկու տառք են, 'ի ձեռն որոց գրեմք եբրայեցերէն զոր, զոր խօսիմք. եւ նոցա սկսմամբք ձայն մարդկային պարփակի. այսպէս քսան եւ երկու մատեանք ստորաթուին. որովք իբրու տառիւք եւ առսկսմամբք, 'ի ներհմտութեն Այ. եւ դեռեւս տհաս եւ կաթնաբոյծ առն արդարոյ խրատի տխմարութին։

Առաջներորդն առ նոսա գիրք՝ կոչի Բրէրեսիթ. զոր մեք կոչեմք Ծննդոց. նաեւ Արարածք։ Երկրորդն Վէլլէ սէմօթ. որ ելք յորջորջի։ Երրորդն Վայիկրայ, այսինքն է Ղեւտացւոց։ Չորրորդն Վայէ դաբբէր. զոր Թիւս անուանեմք։ Հինգերորդն Էլլէ հադդեբարիմ. որ երկրորդօրէն նախանշանակի։ Այդքիկ են հինգ գիրք Մովսէսի. զորս յատկապէս Թօրա, այս է, Օրէն Վերաձայնեն։

Երկրորդ զՄարգարէից կարգն առնեն եւ սկսանին 'ի Յեսուայ որդւոյ Նաւեայ. որ առ նոսա Յեսուէ բէն Նուն ասի։ զկնի այնորիկ ստորահիւսեն զսօփէտիմն. այս է զԴատաւորացն գիրք։ եւ 'ի նոյն շարայարեն զՀռութն. քանզի յաւուրս դատաւորաց արարք նորա ճառին պատմութբ։ Երրորդ հետեւի Սամուէլ. զոր մեք Թագաւորաց զԱռաջներորդ՝ եւ զերկրորդ ասեմք։ Չորրորդ Մելաքիմ, այս է Թագաւորաց. որ երրորդիւ եւ չորրորդիւ Թագաւորաց մատենիւ պարունակի։ Բայց յաւէտ բարեգոյն է Մելաքիմ, այս է Թագաւորաց ասել. քան Մամլաքօթ, այսինքն է Թագաւորութեանց։ զի ոչ զբազմաց ազգաց գրեաց զԹագաւորութիս՝ այլ միոյ իսրայելացւոյ ժողովրդեան, որ ցեղիւք երկոտասանիւք պարունակի։ Հինգերորդն Եսայիաս։ Վեցերորդն Երեմիա։ Եօթներորդն Եզեկիէլ։ Ութերորդն գիրք երկոտասան Մարգարէից. որ առ նոսա կոչի Թերէ ասար։

Երրորդ կարգն զՀագիոգրաֆայս պարփակէ։ Եւ՛ առաջներորդ գիրքն սկսանի 'ի Յօբայ։ Երկրորդն 'ի Դաւթէ. զոր հինգհատորօք, եւ միով մատենիւ Սաղմոսաց պարունակեն։ Երրորդն է Սողոմոն, զերիս գիրս ունելով։ զԱռակսն, զորս նոքա Միսլէ, այս է Առակաց յորջորջեն։

Չորրորդն Կօհէլէթ, այս է Եկղէսիաստէս։ Հինգերորդն Երգերգոց. զոր վերնագրով Սիրհասիրիմ նախանկարեն։ Վեցերորդն է Դանիէլ։ Եօթներորդն Դիբրէ հայամիմ. այս է Ճառք աւուրց. զոր բացայայտագունաբար Քրօնիկօն, այսինքն ժամանակագիր բովանդակի Ածայնոյ պատմութեն կարեմք յորջորջել. որք գիրք առ մեզ Մնացորդաց առաջներորդ եւ երկրորդ ենթագրին։ Ութերորդն Եզրաս. որ եւ նա նմանապէս՝ առ Յոյնս՝ եւ

Լատինացիս յերկուս գիրս բաժանեալ է։ Իններորդն Եսթեր, Որդ՝ այսպէս լինին միահամուռ հնոյ օրինին գիրք՝ քսան և երկու ։ այս է․ Մովսէսի հինգ՝ և Մարգարէիցն ութ ։ Հագիոգրաֆորում, այս է սրբագնագրացն՝ ինն ։ Թէպէտ ոմանք զՀռութն․ և զԿինոթն, այսինքն զողբս՝ 'ի մէջ Հագիոգրաֆիյն գրոտեն․ և զգիրս զայսոսիկ ներ իւրում համարում կարծեն շարաթուէլիս․ և 'ի ձեռն այսորիկ զօլ նախկինի օրէնի մատեանս քսանևչորս․ զորս ընդ թուով քսանևչորից երիցանցն Յայտնութեան Յօհաննու ներաբերէ երկրպագուս Գառինն․ և զպսակս իւրեանց գետնատարած երեսօք մատուցանողս․ կալով առաջի չորից կենդանեացն, աչաւորաց յառաջ և յետոյ․ այս է յանցեալն և յապառնին նկատողաց, և անլռելեաւ ձայնիւ աղաղակողաց․ Սբ․ Սբ․ Սբ․ Տր Ած ամենակալ․ որ էր, և որ է, և որ գալոց է։

Այս առաջաբանութի, կատակարանաց իբրև սաղաւարտեալ սկիզբն, ամենեցուն գրոց՝ զորս յԵբրայեցւոյն դարձուցաք 'ի Լատինականս՝ պատկանիլ կարէ․ զի կարասցուք գիտել՝ զինչ ինչ արտաքոյ արտաքոյ սոցա է՝ 'ի մէջ անստուգիցն գոլ դնելի ։ Ապաքէն Իմաստութիւն, որ հասարակապէս Սողոմոնի մակագրի ։ և Յեսուայ որդւոյ Սիրաքայ գիրք՝ և Յուդիթ և Տուբիթ՝ և Պաստոր, ոչ են ներ կանոնում ։ Մակաբայեցւոց զառաջններորդ գիրսն՝ Եբրայական գտի ։ Երկրորդն՝ Յունականն է․ որ նա և յինքենէ ոճէն ցուցանիլ կարէ։ Որք մինչ զինքեանս այսպէս ունիցին, Աղաչեմ զքեզ ընթերցօղ՝ մի՛ զաշխատանս իմ կշտամբութի համարիցիս նախնեացն ։ Ներ տաճարում Այ մատուցանէ իւրաքանչիւրոք զորինչ կարէ ։ Ոմանք զոսկի՝ զարծաթ՝ և զքարինս պատուականս ։ Ոմանք զբեհեզս՝ և զծիրանիս՝ և զկարմիր մատուցանեն՝ և զկապուտակ ։ Ընդ մեզ բարւոք գործի, եթէ մատուցանիցեմք զմորթս, և զմազս այծեաց։ Եւ սակայն Առաքեալն զանարգագոյնս մեր առաւել հարկաւորս ենթադատէ։ Ուստի և բոլանդակ այն խորանին գեղեցկութի, և 'ի ձեռն իւրաքանչիւրոց տեսակաց, Եկեղեցւոյ ներկայիս, և ապառնւոյ տարորոշութիւն, մորթեօք ծածկի և քրձօք․ և զտապ արեգական,և զվնասակարութի անձրևոյ՝ այնոքիկ որք դուեհկականք են, արգելուն ։ Որդ՝ ընթերցէր զնախորդ Սամուէլն, և զԹագաւորացն իմ․ իմ, ասեմ, իմ ։ Զի զոր ինչ իսկ բազմիցս անդրադարձուցանելով և սրբագրելով ստէպ ստէպ և ուսանիմք և կալնումք, մերն է։ Եւ երբ իմանայցես զոր նախ ոչ գիտէիր, կամ թարգմանիչ զիս վարկցիր, թէ չնորհակալու ես․ կամ յաճախապէս բացատրօղ՝ եթէ ապաշնորհ. թէպէտ ես ամենևին համագիտակ ոչ եմ 'ի խիղճս մտաց՝ թէ փոփոխեալ իցեմ զեր ինչ յԵբրայականէ ճշմարտութէ ։ Ստուգիւ եթէ դժուարահաւան ես՝ ընթերցի՛ր զՅունականս մատեանս․ և զԼատինականս․ և բաղդատեա՛ ընդ այնց գործոց, զորս այժմ սրբագրեցաք․ և ուր ուրեք անհամեմատս 'ի մէջ ինքեանց տեսանիցես, հարց զիւրաքանչիւրոք Եբրայեցւոց՝ որում առաւել համաձայնեցուցանել պարտիս զհաւատ։ և եթէ զմերս հաստատեսցէ, կարծեմ թէ զնա ոչ վարկանիս երազահան․ զի ներ նոյնում վայրում ընդ իս նմանապէս գուշակեսցէ ։ Այլ և զձեզ պաղատօնէ ուհիդ Քրի աղաչեմ․ (որք Տն բազմելոյ ազնուականագունիւ զմուսաւ հաւատոյ օծանէք զգլուխ՝ որք ոչինչ զՓրկիչն խնդրէք ներ գերեզմանում, որոց նարդեանս առ Հայր ել Քն։ ) զի ընդդէմ հաչողաց շանց՝ որք ընդդէմ ինձ մոլեգնեցելով բերանով դաժանանան, և շրջին զքաղաքաւ,և այնու զինքեանս ներհունս վարկանին, եթէ զայլս բամբասիցեն, աղօթից ձերոց զվահանն հակադրեսջիք ։ Ես գիտելով զտկարութիս իմ, զայն վճիռ միշտ յիշեցից ։ Ասացի, պահեցից Սաղ. 38. զճանապարհս իմ․ զի մի մեղայց լեզուաւ իմով ։ Եդի պահապան բերանոյ իմոյ 'ի հակառակիլ մեղաւորին ընդդէմ իմ ։ Լուռ եղէ՝ և խոնարհեցայ․ և լռեցի 'ի բարութենէ։

# ՅԵՐՈՆԻՄՈՍ

## ԱՌ ՊԱՈՒԼԻՆՈՍ։

ԵՂԲԱՅՐՆ ԱՄԲՐՈսիոս, զքոյայինս ընծայիկս ինձ ընձեռեալ՝ առբերեաց համայն և զտրակս համեղագոյնս, որք 'ի սկզբանէ բարեկամութեց՝ զհաւատ արդէն իսկ փորձեցելոյ հաւատոյ՝ և հնոյ բարեկամութե յառաջբերէին․ զի այն ճշմարիտ հարկաւորութի է, և Քի սոսնձիւ շաղկապեալ՝ զոր ոչ շահեկանութի իրի տոհմականի, ոչ ներկայութի միայնակ մարմնոյ ոչ նենգաւոր և խարդաւանեալ ողոքումն այլ երկիւղն Այ՝ և սծայնոց տառից կրթութիւք միաբանեն։ Ընթեռնումք ներհնոց վիպասանութեց․ զոմանս շրջագայեալ 'ի գա․

'ի գաւառս՝ գնացեալս առ Նորս ժողո_
վուրդս՝ անցեալս ը. ծովս, զի զնա՝ զորս 'ի
գրոց ծանեան, առաջի իւկ տեսանիցեն ։
Այսպէս Պիւթագորաս զՄեմփիտիկա_
ցիսն նախաձառօղս, այսպէս Պղատոն
զԵգիպտոս, և զԱրքիտաս զՏարենտի_
նացի, և զայն ծայրն Իտալիոյ, որ վաղու_
րեմն մեծ Յունաստան ասիւր, աշխատե_
ղաբար շրջագայեցաւ. զի որ Աթենացւոց
վարդապետ էր, և կարօղ, որոյ և զվար_
դապետութին Ակադեմիոյ համալսարանքն
հնչեցուցանէին, լինիւր նժդեհ, և աշա_
կերտ. յաւէտ կամելով զայլայինս պատ_
կառաբար ուսանիլ, քան զիւրայինս ան_
պատկառաբար ներախմբել ։ Յետայնորիկ
մինչ զտառս իբրև զփախստականս ը. բո_
լոր ոլորտս հետազօտէր, գերեալ 'ի ծո_
վայնոց աւազակաց և վաճառեցեալ՝ նաև
բռնակալի դաժանագունի հնազանդե_
ցաւ, գերի, կապեալ, և ծառայ ։ Բայց
քանզի փիղոսոփոս էր, մեծագոյն քան
զգնօղն իւր եղև ։ Առ Տիտոս Լիւիոս՝ յոր_
մէ կաթնեղէն աղբիւր ճոռոմաբանութե
բղխէր՝ 'ի վերջնոց սահմանաց Սպանիոյ և
Գալլիացւոց զոմանս ազնուականս եկեալս
ընթեռնումք. և զորս 'ի տեսութի իւր
Հռոմ ոչ էր քարշեալ՝ միոյ մարդոյ համ_
բաւն առածեաց ։ Ունեցաւ հասակն այն
զանլուրն ամենեցուն աշխարհաց՝ և զհռ_
չակելի սքանչելին. զի յայնքան քաղաք
մտեալք, զայլ ինչ արտաքոյ քաղաքին խու_
զէին ։ Ապողոնիոսն, կամ այն մոգ, ( որպ
ամբոխն խօսի ) կամ փիղիսոփայն. որգու_
նակ Պիւթագորականքն աւանդեն. ե_
մուտ 'ի պարսիկս, եանց ընդ Կովկաս, ընդ
Ալբանս, Սկիւթս, Մասագեթս՝ ը. փար_
թամագոյնս հնդկաց թագաւորութիւնս
թափանցեաց, և առ աւարտն, ը. լայնեղ
Փիսոն գետն անդրանցանելով՝ եհաս 'ի
Բրաքմանս, որպ զի Հիարքայի նստելոյ
'ի վերայ աթոռոյ ոսկեղինի, և 'ի Տանտա_
լեայ աղբերէն ըմպօղի՝ 'ի մէջ սակաւուց
աշակերտաց, զբնութե, զշարժմանց աս_
տեղաց, և զաւուրց ընթացից ուսուցա_
նողին լսիցէր ։ Անտի անցեալ ընդ Ելա_
միտացիս՝ Բաբիղոնացիս՝ Քաղդէացիս՝
Մարս, Ասորիս, Պարթևս, Սուրացիս,
Փիւնիկեցիս, Արաբացիս, և ընդ Պաղես_
տինացիս, անդրադարձաւ յԱղեքսանդ_
րիայ. և անտի չոգաւ յԵթէօպիայ. զի
զԳիմնոսոփիստայսն, և զհռչակաւորն
արեգական զսեղանն տեսանիցէր 'ի յաւա_
զում ։ Եգիտ այն այր ամ ուրեք զոր
ուսանիցիւր՝ և միշտ զարգացեալ՝ յար ին_
քեան բարեգոյն լինիւր ։ Գրեաց 'ի վերայ
սորին գերալրաբար ութամբք մատենիւք
Փիլոստրատոս.

Բ. Զինչ խօսեցայց զմարդկանց յաւիտե_



նիս, յորժամ Առաքեալն Պօղոս, անօթն (Գործ. 9.15.)
ընտրութե, և վարդապետն հեթանոսաց՝
որ զխղճէ մտաց այնքանոյ 'ի յինքն նշդեհի
խօսէր, միթէ փորձ ինչ խնդրէք այնորիկ, (2.Կորն. 13.3.)
որ ինև ս խօսի Քս, զկնի Դամասկոսի և
Արաբիոյ այց առնելոյն՝ եւ յերեմ, զի տես_ (Գաղ. 1.17.)
ցէ զՊետրոս. և մնաց առ նմա աւուրս հն_
գետասան ։ զի այսու խորհրդով եօթնեկի
և ութնեկի՝ առ յապայսն հեթանոսացքա_
րոզ կացուցանելի էր ։ Նա դարձեալ զկնի (Գաղ. 2. 1.)
ամաց չորեքտասանից ը. ինքեան առնլով
զԲառնաբաս և զՏիտոս՝ բացայայտեաց
Առաքելոյն զԱւետարանն, մի գուցէ ը.
ունայն ինչ ընթանայցէր, կամ ընթացեալ
իցէր ։ Զի ունի ոչ գիտեմ զինչ թաքու_
ցելոյ ազդողականութե կենդանի ձայնն.
և յականջս աշակերտի 'ի բերանոյ վարդա_
պետին անդրահոսեալ՝ զօրեղաբար հնչէ ։
Ուստի և Էսքինէս մինչ 'ի Ռոդ կղզին աք_
սորիւր, և ընթերցեալ լինիւր այն Դե_
մոսթենեայ բանն, զոր ընդդէմ նր ունեալ
էր, 'ի զարմանալն ամենեցուն, և 'ի գո_
վաբանելն, հառաչեալ ասէ ։ Զի՞նչ եթէ
լուեալ իցէիք զինքն զգազանն, զիւրայինս
բանս վերահնչել։

Գ. Զայսոսիկ ոչ ասեմ, թէ իցէ 'ի յիս իր
ինչ այնպիսի, զոր կամ կարիցես յինէն
լսել, կամ կամիցիս ուսանիլ. այլ զի տապ
քո, և ուսանելոյ ջանն՝ նաև թարց մեզ 'ի
ձեռն ինքեան փորձիլ պարտի։ Խոհակա_
նութի մտավարժ նաև առանց ուսուցչի
գովելի է ։ ոչ զորինչ գտանիցես, այլ զոր
ինչ խնդրիցես՝ մտածեմք ։ Կակուղ է մոմն,
և առ 'ի կերպաւորիլ դիւրին. նաև եթէ
արուեստաւորի և նկարողի ձեռքն զկայ
առնուցուն. սակայն զօրութբ բոլորն է՝
որինչ գոլ կարէ։ Պօղոս առաքեալն առ ոտս (Գործ. 22.3.)
Գամաղիէլի զօրէնս Մովսէսի և զմարդա_
րեսն ուսեալ գոլ զինքն՝ պարծի, զի սպա_
ռազինեալ հոգևորականօք սլաքօք, յետոյ
ասէր համարձակաբար ։ Զէնք զինուո_ (2. Կորն. 10.4.)
րութե մերոյ ոչ են մարմնաւորք. այլ զօ_
րեղք Աստուծով առ 'ի քակել զամուրս.
զխորհուրդս քակօղք. և զամ բարձրութի
հպարտացեալ ընդդէմ գիտութեն Այ ։
և գերօղք զամ միտս 'ի հնազանդութին
Քի. և պատրաստեալք նուաճել զամ
անհնազանդութի ։ Առ Տիմոթէոս գրէ՝ (2.Տիմ. 3.15.)
'ի մանկութենէ սրբազանիւք գրովք վար_
ժեալ. և յորդորէ առ ջան ընթերցմանն. զի (1.Տիմ. 4.13.)
մի անփոյթ առնիցէ զշնորհն որ տուեալ է
նմա ձեռնադրութբ երիցութեն ։ Տիտոսի (Տիտոս. 1. 9.)
պատուիրէ՝ զի 'ի մէջ այլոց առաքինութեց
եպիսկոպոսի, զոր կարձառօտիւ զրուցով
տպաւորեաց, նաև զգիտութի գրոց ընտ_
րիցէ 'ի նմա ։ Պինդ ունիլ ասէ՝ զայն, որ
ըստ վարդապետութե է, զբանն հաւա_
տարիմ. զի կարօղ լիցի յորդորել ողջա_

միտ վարդապետութե՟. և զհակառակորդս կշտամբել։

Վասնզի գուեհկութիւնն ոք՝ միայն ինքեան է օգտակար. և որքան շինէ զեկեղեցի Ք՟ի յարժանաւորութե՟ կենցաղավարութե՟, այնքան վնասէ, եթէ աւերողացն ոչ ընդդիմասցի։ Մաղաքիա մարգարէն, մանաւանդ 'ի ձեռն Անդեայ՝ Տէրն ասէ՝ հարց ցքահանայս զօրէնս. այնքան քահանայի պաշտօն է հարցուածոյն պատասխանել յօրինացն։ Նաև յերկրորդ օրէնսն ընթեռնումք. հարց ցհարս քո՝ և պատմեսցեն քեզ. ցծերս քո՝ և ասասցեն քեզ։ Ներ սաղմոսում Լաս հարիւրորդում ութևտասաներորդում. Գովելիք են ինձ իրաւունք քո 'ի տեղւոջ պանդխտութե՟ իմոյ։ Նաև ներ ստորագրութե՟ առն արդարոյ. յորժամ զնա Դաւիթ ծառոյն կենաց՝ որ է 'ի դրախտին՝ համեմատէր, 'ի մէջ այլոց առաքինութեց և զայս ներբերեաց. յօրէնս Տ՟ն են կամք նորա. և յօրէնս նո՟ խորհեսցի նա 'ի տուընջեան և 'ի գիշերի։ Դանիել ներ վերջնում սրբազնագունեղի տեսլեանն ասէ, զարդարս փայլակնիլ իբրև զաստեղս. և զվերահասուս, այսէ, զհմտացեալս՝ իբրև զհաստատութի։ Տեսանե՞ս, որքան ներ ինքեանց բացակային արդար գուեհկուին, և հմտացեալ արդարուին։ Սմանք աստեղաց, ոմանք երկնի համեմատին. թէպէտ ըստ Աբրայականի ճշմարտութե՟, երկաքանչիւրն զհմտացելոց կարէ իմանիլ։ զի այսպէս առ նոսա ընթեռնումք։ Իսկ որք հմտացեալք լիցին, փայլեսցին իբրև զփայլակն հաստատութե՟. և որք առ արդարութին վարժեցուցանեն զբազումս՝ իբրու զաստեղս 'ի յարակայականս մշտնջենաւորութիս։ Ընդէ՞ր ասի առաքեալն Պօղոս անօթ ընտրութե՟։ վասն այնորիկ, քանզի օրինաց և մատենից սրբոց էր շտեմարան։ Փարիսեցիքն ափշէին 'ի վարդապետուին Տ՟ն։ և զարմանային ընդ Պետրոս և Յօհաննէս, զիա՞րդ զօրէնս գիտասցեն, որք զգիրս ոչ ուսան։ Զի զորինչ այլոց կրթուին, և հանապազորդական յօրէնս մտածուի հաստուցանել սովորէ. նոյ՟ զայս հոգին ո՟ք յիշեցուցանէր. և էին ա՟ այնմ, որ գրեցաւ ա՟ծուսոյցք։ Երկոտասան ամս փրկիչն լցեալ էր՝ և 'ի տաճարին զերիցունս սակս խնդրոց օրինին հարցանելով, առաւել ուսուցանէ՝ մինչ հանճարեղաբար հարցանէ։ Բայց եթէ գուեհիկ զՊետրոս. գուեհիկ ասեմք և զՅօհաննէս. որոց երկաքանչիւրն ասել կարէր. Թէպէտ տգէտ բանիւ, բայց ոչ գիտութե՟։ Յօհաննէս գուեհիկ, ձկնորս, անուսումն, և ուստի՞ այս ձայն՝ աղաչեմ. Իսկզբանէ էր բանն. և բանն էր առ Ա՟ծ, և Ա՟ծ էր բանն. զի լօհօս Յունարէն զբազումս նշանակէ. քանզի՝ և բանէ, և պատճառ, և ենթադատութիւն, և պատճառ իւրաքանչիւրոյ իրի. 'ի ձեռն որոյ են իւրաքանչիւրքն, ուր ենթակայանան. զորս հանուրս ուղղապէս իմանամք 'ի Ք՟ի։

(Գ. — Մաղ. 2.12. — 2.Օրէ. 32.7. — Սաղմ. 1.2. — Դանի. 12.3. — Գործ. 9.15. — Եսայ. 54.13. — Յօհան. 6.45. — Ղուկ. 2.46. — 2.Կորն. 11.6. — Յօհան. 1.1.)

Զայս գիտունն Պղատոն ոչ գիտաց, զայս Դիմոսթենէս ճոռոմաբանն ոչ գիտացաւ։ Կորուսից (ասէ) զիմաստութի իմաստնոց. և զհանճարեղութի հանճարեղաց արհամարհեցից։ Ճշմարիտ իմաստութին կորուսցէ զսուտ իմաստութի։ և թէպէտ յիմարութի քարոզութե՟ իցէ 'ի խաչին՝ սակայն Պօղոս զիմաստութի խօսի 'ի մէջ կատարելոց։ բայց զիմաստութի ոչ աշխարհիս այսորիկ, և ոչ իշխանաց աշխարհիս այսորիկ զխափանելեացս. այլ խօսի զԱ՟յ իմաստութին զծածկեալն խորհրդով, զոր նախասահմանեաց Ա՟ծ յառաջ քան զյաւիտեանս։ Ա՟յ իմաստութին, Ք՟ս է. Վասնզի Ք՟ս Ա՟յ զօրութի, և Ա՟յ իմաստութի։ Այս իմաստութի ներ խորհրդեան ծածկեալ է. յաղագս որոյ և իններորդի սաղմոսի վերնագիր նախանշանի, վ՟ն գաղտնեացն որդւոյ. նորում գոն ա՟մք գանձք իմաստուե և գիտուեն Ա՟յ ծածկեալք։ Նաև որ ներ խորհրդեան ծածկեալ էր, նախասահմանեալ է յառաջ քան զյաւիտեանս. նախասահմանեալ նաև նախանկարեալ յօրէնս և 'ի մարգարէս։ Սոտի և մարգարէքն յորջորջէին տեսանողք. զի տեսանէին զայն, զոր այլք ոչ տեսանէին։ Աբրահամ ետես զօր նո՟, և ուրախ եղև։ Բանայի՞ն երկինք Եզեկիէլի, որք ժողովրդեան մեղաւորի փակեալք էին։ Զարթո՛ (ասէ Դաւիթ) զաչս իմ, և նայեցայց 'ի սքանչելիս օրինաց քոց։ Զի օրէնն հոգևոր է, և յայտնուե կարօտի, զի իմանիցի, և բացօք երեսօք զփառս Ա՟յ համանկատիցեմք։ Գրկուկն ներ յայտնութեն եօթամբք կնքօք կնքեալ ցուցանի. զոր թէ տացես առն գիտողի զգիրս՝ զի ընթերցցի. պատասխանեսցէ քեզ. ոչ կարեմ, զի կնքեալ է։ Որքանք այսօր կարծեն զինքեանս ճանաչել զգիրս. 'ի ձեռն առնուն զգիրքն կնքեալ՝ և ոչ բանալ կարեն, եթէ ոչ նա բանայցէ՝ որ ունի զփականս Դաւթի. որ բանայ, և ոչ ոք փակէ. փակէ, և ոչ ոք բանայ։ Ներ գործոց Առաքելոց ո՟ք ներքինին մանաւանդ այր (Վասնզի այսպէս զնա ո՟ք գիրն մականուանէ) երբ ընթեռնոյր զԵսայի մարգարէ. հարցեալ 'ի Փիլիպպոսէ, իմանա՞ս արդեօք, զորս ընթեռնուս։ Պատասխանեաց, զիա՞րդ կարեմ, եթէ ոչ այլոք զիս ուսուսցէ։ Ես (զի յաղագս իմ խօսեցիմ նարդեանս) ոչ եմ սրբագոյն եմ քան զայս ներքինի, և ոչ ուսումնասիրագոյն, որ յԵթէօպիոյ՝ այսէ 'ի ծագաց աշխարհի եկն 'ի տաճարն, թողեալ զապարանս թագաւորականս. և այնքան սիրող օրինի,

(Ա.Կոր. 1.8. — Եսայ. 29.14. — 1.Կորն. 1.19. — 2.Կորն. 1.12. — Կողոս. 2.3. — Յօհան. 8.56. — Եզեկ. 1.1. — Սաղմ. 118.18. — Հռովմ. 7.1. — 2.Կորն. 3.18. — Յայտ. 5.1. — Եսայ. 29.12. — Յայտ. 3.7. — Գործ. 8.32. — Գործ. 8.32.)

օրինի, և ա̃ծայնոյ գիտութե̃ եղև, մինչ զի 'ի կառլին եւս ընթեռնոյր զգիրս սրբազանս։ Բայց սակայն երբ զգիրս 'ի ձեռն առնոյր, և զլանս Տ̃ն խոկմամբ յղանայր, լեզուաւ դարձուցանէր, շրթամբք հնչէր՝ ադխտանայր զայն, զոր ներ գրոց ադխտանալով պատուէր։ Եւն փիղիպպոս, եցոյց նմա զՅ̃ս, որ փակեալ թաքչիւր ներ տառումն։ Ով սքանչելի ուսուցչի զօրութն. 'ի նմին ժամու հաւատայ Եթերքինին, մկրտի, և հաւատացեալ՝ և սբ̃ եղև. և վարդապետ յաշակերտէն, առաւել 'ի յանապատացեալ աղբեր եկեղեցւոյ, քան ներ ոսկեզօծուամ տաճարոջ ժողովարանի վերագտանէ։ Ապաքէն յինէն յուշարարեան համառօտաբար. (զի և ոչ նամակական անձկութին երկարագունաբար դեգերիլ թոյլ տայր) զի իմանայցէիր զքեզ ներ գրոց սրբազանից թարց նախընթացի, և ցուցանողի զշաւիղս՝ ոչ կարել մտանել։

Օ. Լուեմ յաղագս քերականաց՝ ճարտասանից, փիղիսոփայից, երկրաչափից, դիալեկտիկոսաց, երաժշտաց՝ աստեղաթուաց, աստեղաբաշխից՝ բժշկաց, որոց մակացութն մնհկանացուաց օգտակարագոյն է. և յերիս մասունս որոշի։ Ապա նուաստագոյն արհեստս եկից. որք ոչ այնքան լեզուաւ, որքան ձեռամբ մատակարարին. երկրագործք, քարահատք, արհեստաւորք հրահալելեաց, և փայտահարք, իսկ և ասուագործք, և թափիչք, և այլք որք զզանազան զանօթս, և զգռեհկական գործս կազմեն, թարց ուսուցչի լինիլ ոչ կարեն՝ որոյ ըղձանս Որ բժշկացն է, խոստանան բժիշկք. բացայայտեն զհիւսնականսն հիւսունք. միայն գրոց արհեստն է, զոր յինքեանս անխտրաբար ամենեքեան գրաւեն։ Դորեմք անուսք, և ուսեալք զտաղս անխտրաբար։ Օ այս շաղակրատող պառաւ, զայս շաղփաղփող ծեր, զայս իմաստակ շատախօս, զայս ամենեքեան նախագրաւեն, պատառոտեն, ճեղքեն, և ուսուցանեն յառաջ քան զուսանիլն։ Ոմանք բարձրայօնութբ̃ զբանս ծանունս վերակշռեալք, 'ի մէջ կանանց յաղագս գրոց սրբազանից փիղիսոփայանան։ Ոմանք ուսանին, (ո՞վ պատկառանաց) յիգաց, զի զարս ուսուսցեն, և զի մի՛ դոյզն ինչ իցէ այս, ոմանք դիւրութբ̃ բանից, մանաւանդ համարձակութբ̃ մեկնեցին այլոց՝ զոր ինքեանք ոչ իմանան։ Լուեմ զիմոց նմանեաց, որք թէ գուցէ առ գիրս սբ̃ս զկնի աշխարհականաց տառից եկին, և շարադրեցելով բանիւ զունկս ժողովրդեան կակղացուցին, զորինչ ասացին, զնոյնն օրէն Ա̃Յ վարկանին. և ոչ հաճին գիտել զինչ մարգարէքն, զինչ Առաքեալքն զգացին։ այլ առ զգացումն իւրեանց զանպատշաճականս յարմարեն զմկայութիս. իբրու թէ մեծ իցէ, և ոչ յոռեգունեղ սեռ ուսուցանելոյ՝ եղծել զիմացուածս, և առ կամս իւրեանց քարշել զնբ̃ գիրն հակամարտող։ Իբրու ոչ իցեմք ընթերցեալք զհոմերակարկատոն, և զվիրգիլակարկատոն. և ոչ այսպէս նաև զՄարօն թարց Ք̃ի կրասացուք ասել Քրիստոնեայ, քանզի գրեաց. Արդէն վերադառնայ և կոյս, վերադառնան երևակականք թագաւորութիւնք։ Արդէն նոր ծնունդ 'ի յերկնէ բարձու 'ի վայր իջուցանի։ Եւ զհայր խօսող առ Որդի։ Ով որդի իմ զօրութն, իմ մեծ կարողութն միայն։ Եւ զկնի բանից փրկչին 'ի խաչին։ Օ այսպիսիս յիշատակելով պնտեալ կայր, և բևեռեալ մնայր։ Տղայականք են այսոքիկ, և պարառուաց խաղու նմանք, ուսուցանել զոր ադխտանաս, մանաւանդ (որպէս զի հանդերձ ցասմամբ խօսեցայց) և ոչ զայս արդարև գիտել՝ թէ անդխտանաս։

Ծ. Ծնն. Այնինքն բացայայտագոյն է ծննդոցն նորումասկս ստեղծման աշխարհի, յաղագս սկզբնաւորութե սեռի մարդկայնոյ. ասկս բաժանման երկրի. յաղագս խառնակութե լեզուաց և ազգաց՝ մինչև յելսն շարագրի Եբրայեցւոց։

Ելք. Բացայայտ է Ելքն ընդ տասանց հարուածոցն, ընդ տասանց պատգամացն հանդերձ խորհրդականօք և Աստուածայնօք պատուիրանօք։

Ղևտ. Դիւրաքաղաքներ է Ղևտացւոց գիրքն. Ղևտացւոց։ նորումն իւրաքանչիւրք զոհք, մանաւանդ իւրաքանչիւրք գրեթէ վանկք, և զգեստք Ահարոնի, և բոլոր կարգ Ղևտական, շնչեն զխորհուրդս երկնայինս։

Թուոց. Իսկ թուոց, ոչ ապաքէն համրոյ թուաբանութե, և մարգարէութե Բաղաամայ. և քառասուն և երկուց՝ 'ի յանապատին իջևանաց զխորհուրդս շարափակէ։

Երկր. Օրէն. Իսկ Երկրորդօրէնն, Աւետարանականի օրինի նախաձևութն. ոչ ապաքէն այնպէս ունի զայնս՝ ոյք նախնագոյնք են, ո̃պ զի սակայն նորոգք լիցին ամէն 'ի հնոցն։ Մինչև ցաստ Մօսէս, մինչև ցաստ հինգ մատեանքն. որովք հնգիւք բանիւք խօսիլ զինքն կամիլ Առաքեալն ներ եկեղեցւոջ՝ պարծի։

1. Կորն. 14. 19.

Յոբ. Յոբ յարացոյց համբերութե, զո՞րս խորհուրդս ոչ պարունակէ իւրով բանիւ։ Արձակ բանիւ սկսանի. տողովք վայրաբերի. ոտանաւորօք զրուցիւք աւարտի. և զա̃մ զօրէնս Դիալեկտիկայի, նախադասութբ̃, վերաւմամբ, հաստատութբ̃, եզրակացութբ̃ սահմանադրէ։ Իւրաքանչիւրք բանք 'ի նմին՝ լիք են զգացմամբ։ Եւ (որպէս զի յաղագս այլոց լռեցից) զյարութի մարմնոց այնպէս նախագուշակէ՝ մինչ զի ոչ իք

զայն_

զայնմանէ յայտնագոյն կամ զգուշագոյն գրեաց ։ Գիտեմ, ասէ, զի փրկիչն իմ կեայ. և յաւուրն յետնում յերկրէ յառնելոց եմ, և վերստին շուրջարկանիցիմ մորթով իմով. և 'ի մարմնի իմում տեսից զՏ՟Ծ, զոր տեսանելոց եմ ես ինքնին. և աչք իմ հայելոց են, և ո՛չ այլոք ։ Մեբանեալ է այս յոյս իմ 'ի ծոց իմ ։ (Յոբ. 19.25.)

(Յեսու_ այ. կամ Յեսու որդի Նաւեայ) Ընկեց առ Յեսու նաւեայ՝ որ զտիպ Տ՟Ն ոչ միայն արարիւքն, այլ՛ նաև անուամբն յառաջաբերէ ։ Եանց ընդ Յորդանան, զթագաւորուհս թշնամեաց կործանեաց. բաժանեաց զերկիրն ժողովրդեանն յաղթողի. և 'ի ձեռն իւրաքանչիւրոց քաղաքաց՝ լեռանց՝ գետոց՝ ագարակաց՝ հեղեղատից՝ և սահմանակցութեց, եկեղեցւոյ, և երկնաւորին Երէմի՝ զարքայութիս հոգևորս ստորագրէ ։

(Գիրք Դատաւորաց ։) Ներ դատաւորաց գրոց՝ որքան իշխանք ժողովրդոց են, այնքան կերպարանք են ։

(Հռութեայ ։ Եսայ. 15.9.) Հռութ Մովաբացի՝ Նոսյեայ կատարէ զնախագուշակութի, ասելոյն. Առաքեա զգառն, Տ՟Ր, զՏիրողն երկրի, 'ի վիմէն անապատի՝ առ լեառն դստեր Սիոնի ։

(Թագաւորաց 1. և 2.) Սամուէլ մահուամբն Հեղեայ, և սպանմամբն Սաւուղայ, զօրէնն զհին ունայնացեալ ցուցանէ ։ իսկ 'ի Սադոկ և 'ի Դաւիթ, զխորհուրդս նորոյ քահանայութե, և նորոյ իշխանութեան թագաւորականի վկայէ ։

(Թագաւորաց 3. և 4.) Մեղաքիմ, այսէ երրորդ և չորրորդ թագաւորաց գիրք. 'ի Սաղոմոնէ մինչև ցՅեքոնիայ ։ և յԱրոբովամայ որդւոյ Նաբատայ մինչև ցՕվսէէ, որ տարեալ եղև յԱսորիս, զթագաւորութիւն Յուդայի, և զթագաւորութիւնն Իլի ստորագրէ ։ Եթէ զպատմութիւն նկատեսցես, բանք պարզք են. իսկ եթէ ներ գրոց զզօրեալ զիմացումն ներ նկատեսցես՝ Եկեղեցւոյ նուազութիւն, և հերձուածողաց ընդդէմ եկեղեցւոյ մաքառմունքն ձառէին ։

Երկոտասան մարգարէքն 'ի յանձկութիս միոյ մատենի սեղմեցեալք՝ յոյժ առաւել զայլ՝ քան զոր հնչեն ներ գրոց, նախանկարեն ։

(Օսէէ ։) Օսէէ յաձախաբար անուանէ զԵփրայիմ, զՍամարիայ, զՅօսէփ, զՅեզրայէղ, և զկինն պոռնկութե. և զորդիս պոռնկութե, և զշնացեալն ներփակեցեալ 'ի սենեկի առն՝ բազմաւ ամանակաւ նստիլ այրի, և ենթ զգեստու սգաւորի, առն առ ինքն վերադառնալոյ ակնունիլ ։

(Յովէլ ։) Յովէլ որդի փաթուէլի ստորագրէ զերկիր երկոտասանիցն ցեղից թրթրով, խառնձով, մորախով, և ժանգով ապականչաւ սպառեալ. և զկնի կործանման առաջնոյ ժողովրդեանն, հեղանելի զոգւոյն սբ 'ի վ՟ր ծառայից Տ՟Ն և աղախնաց. այսէ 'ի վ՟ր հարիւր քսանից հաւատացելոցն անուանց. և զհեղանելի զոյն 'ի վերնատունն Սիոնի ։ Այլ և հարիւր քսանք, 'ի միոյն մինչև 'ի հնգետասանն մեղմաբար՝ և 'ի ձեռն աձողութեց յարուցեալք՝ զհնգետասանից աստիճանաց զթիւ բացակատարեն՝ որք ներ սաղմոսումն խորհրդաբար պարունակին ։ (Գործ. 2.17.)

(Ամոս ։) Ամոս հովիւ, և գուեհիկ, և զթութս մորենեայ քաղօղ՝ սակաւուք բանիւք բացատրել ոչ կարէ ։ Վասնզի ո՞վ արժանապէս բացատրեսցէ զերիս և զչորս զանօրէնութիս Դամասկոսի, Գազայ, և Տիւրոսի, և Եդովմայ, և որդւոց Ամոնայ՝ և Մովաբու. և ներ եօթներորդի, և ութերորդի աստիճանում Յուդայի և Իսրայէլի ։ Սա խօսի առ երինջս պարարտս, որք են 'ի լերինն Սամարիոյ. և զկործանումն տան մեծագունի և փոքրագունի վկայէ ։ Սա տեսանէ զկապարոցն մարախոյ. և զՏ՟Ր կացեալ 'ի վերայ պարսպին ծեփեցելոյ, կամ անդամանդեղինի. և զձանձ մրդաց, զառ քարշօղ զտանջանս մեղաւորաց. և զսով յերկիր, ո՛չ զսով հացի, և ո՛չ զծարաւ ջրոյ. այլ լսելոյ բանին Տ՟Ն ։

(Աբդիաս ։) Աբդիաս, որ թարգմանի ծառայ Տ՟Ն, որոտայ ընդդէմ Եդովմայ արիւնահեղի, և երկրաւորի մարդոյ. նաև եղբօրն Յակոբայ միշտ զնախանձաւորն, նիզակաւ հոգևորաւ հարկանէ ։

(Յովնան.) Յովնան, գեղեցկագոյն աղաւնի, նաւաբեկութբ իւրով զչարչարանս Տ՟Ն նախանկարեալ՝ զաշխարհ յապաշխարութի վերակոչէ. և ենթ անուան Նինուէի՝ հեթանոսաց զփրկութի քարոզէ ։

(Միքիաս ։) Միքիաս 'ի Մորասթիոյ ժառանգակից Ք՟Ի, զասպատակումն պատմէ դստեր աւազակի. և զպաշարումն դնէ ընդդէմ նմա. քանզի զծնօտս եհար դատաւորին Իսրայէլի ։

(Նաւում ։) Նաւում մխիթարիչ տիեզերի՝ կշտամբէ զքաղաքն արիւնահեղ, և զկնի կործանման նորա խօսի ։ Ահա 'ի վ՟ր լերանց ոտք աւետարանչի, և քարոզողի զխաղաղութի

(Ամբակում ։) Ամբակում ըմբիշ հզօր՝ և պինդ, կայ 'ի վերայ պահպանութե իւրոյ. և հարկանէ զվրան 'ի վ՟ր ամրոցի. զի զՔ՟Ս 'ի խաչին դիտեսցէ, և ասասցէ ։ Ծածկեցին զերկինս փառք նորա, և գովութբ նր լցաւ երկիր ։ Պաշտագայթ նր որպէս զլոյս եղիցի. եղջիւրք 'ի ձեռս են նր. անդ թագուցաւ զօրութի նր ։

(Սոփոնիաս ։) Սոփոնիաս դէտ, և գաղտնեաց Տ՟Ն, տեղեակ լսէ զաղաղակ 'ի Դրանէն ձկանց. և զկականումն յԵրկրորդէն. և զբեկումն 'ի բլրոց ։ Յուցանէ ևս զկոծ բնակողաց 'ի յանկանի, քանզի համրացաւ ամ ժողովուրդ Քանանու, ցրուեցան բոլոր դակք ։

դակք, որք չրջապատեցեալք էին ար_
ծաթով ։

Անգէ_ առ։ Անդէաս զուարձամիտ, և խրախ, որ սերմանեաց արտասուօք՝ զի խնդութբ հն_ ձեսցէ․ զքանդեալ տաճարն շինէ․ և զԱ․Ծ զհայր ներբերէ խօսեալ։ Դեռևս սակաւ մի ևս, և ես շարժեցից զերկին, և զերկիր, և զծով, և զցամաք, և շարժեցից զամե_ նեսեան զհեթանոսս․ և եկեսցէ ընձայլին համուրց հեթանոսաց ։

Զաքար_ իաս։ Զաքարիաս յիշատակ Տն իւրոյ․ բազ_ մակերպ ներ մարգարէութեան, զՅեսու հանդերձիւք աղտեղացելովք զգեստա_ որեալ՝ և զվէմն եօթնաչեայ, և զաշտանակն ոսկեղէն, ընդ նոյնքանեաց ճրագաց որ_ քանից աչացն․ երկուս ևս ձիթենիս 'ի ձախ_ մէ ճամբարին տեսանէ՝ և յաջմէ․ զի զկնի ձիոյն սևից՝ կարմրաց՝ աշխտակաց՝ և պի_ սակոտաց, և կառացն յրուճեցելոց Յոփ_ րեմէ, և երիվարայն Յերուսաղէմէ, զԹա_ գաւորն զաղքատ նախագուշակեաց, և նախաձայնեաց զնստեալն 'ի վՆ տրմիլ յաւանակի իշոյ ստորածելոյ ։

Մաղա_ քիաս։ Մաղաքիաս յայտնապէս, և 'ի վերջին ամենեցուն մարգարէից, զբացընկեցմա_ նէն Իլի, և զկոչմանէն հեթանոսաց․ Ոչ էն ինձ, ասէ, կամք 'ի ձեզ, ասէ Տր զօ_ րութեց․ և զընծայ ոչ ընկալայց 'ի ձեռաց ձերոց․ զի յելիցն արևու մինչև 'ի մուտս, մեծ է անուն իմ 'ի հեթանոսս․ և նամէ_ նուամտեղւոջ զոհ նուէրի, և մատուցանի անուան իմոյ մատուցումն մաքուր ։

Եսայի։ զԵսայիաս, զԵրեմիաս, զԵզեկիէլ, և զԴանիէլ․ ո՞վ կարէ իմանալ, կամ մեկնել։ Որոց առաջներորդն՝ ոչ զմարգա_ րէութիւն ինձ երևի հիւսել․ այլ զԱ․Ետարան ։

Երեմ_ իա։ Երկրորդն, զգաւազանն ընկուզեայ՝ և զկաթսայ եռանդեան յերեսաց հիւսիսոյ․ և զկնձն մերկացեալ յիւրոց երանգաց, և քառադիմի զանազանիւք չափուք շարա_ գրէ զալֆաբէտն ։

Եզեկի_ էլ։ Երրորդն, զակզռւնս և զվերջն այնքա_ նեօք ունի նսեմութեմբք պարփակեալս, մինչ զի առ Եբրայեցիս այսորիկ բաժինք հան_ դերձ սկսուածով ծննդոց՝ նախ քան զամս երեսուն ոչ ընթերցեալք լինին ։

Դանի_ էլ։ Իսկ չորրորդն, որ և վերջին 'ի մէջ չորից մարգարէիցս, ժամանակաց տեղեակ․ և բոլորի աշխարհի պամոռնէից հմուտ․ զվէմն հատեալ 'ի լեռնէն Թարց ձեռաց, և զա_ մենեսեան զԹագաւորութիս տապալեալ, պայծառիւ զրուցով հրատարակէ ։

Դաւ_ իթ։ Դաւիթ Սիմոնիդէս մեր, Պինդարոս, և Ալկէոս, Փլակկոս ևս, Կատուլլոս, իսկ և Սերենոս, զՔս քնարիւ հնչէ․ և ներ տասնաղւոջ սաղմոսարանում 'ի դժոխոց զարթուցանէ զյառնօղն ։

Առակ։ Ժողո_ վող։ Սողոմոն խաղաղարար, և սիրելի Տն, զբարս ուղղէ, զբնութի ուսուցանէ, զԵկե_ ղեցի շաղկապէ և զՔս․ և սքե հարսանեաց համեղաբար երգէ զերգս առապաստի ։

Երգ եր_ գոց։ Եսթեր։ Եսթեր 'ի տիպ Եկեղեցւոյ զժողո_ վուրդն ազատէ 'ի վտանգէ․ և սպանմամբ Համանայ (որ Թարգմանի անիրաւութի) զմասունս բարեկենդանութե, և զօր հան_ դիսաւոր եԹող առ յետնորդս ։

Մնա_ ցորդք։ Մնացորդաց մատեան, այս է գործւոյ հնոյ համառօտարան, այնքան և այնպիսի է, մինչ զի առանց նո Թէոք զգիտութի մատենից իւրեանց կամիցի սեպհականել՝ ինքն զինքն ծաղր առնիցէ ։ քանզի 'ի ձեռն իւրաքանչիւրոց անուանց և յօդուածոց բանից, և 'ի բաց Թողեալք ներ մատենից Թագաւորաց շօշափին պատմութիք, և ան_ համարք բացատրին Աւետարանի խնդիրք։

Եզրաս։ Նեեմ_ իա։ Եզրաս, և Նեեմիաս, օգնական և մխի_ Թարիչ 'ի Տէ, 'ի մի մատեան պարփակին, շինեն զտաճարն․ զպարիսպն կառուցա_ նեն քաղաքին․ և այն ամ ամբոխ ժողո_ վրդեանն անդրադարձողի 'ի հայրենին, և աշխարհագրութի քահանայից, Ղևտաց_ ւոց, Իլի, և եկամտից, և 'ի ձեռն իւրա_ քանչիւրոց ցեղից պարսպաց, և բրգաց գործք որոշեցեալք, զայլ իմն ներ կեղևոջ յառաջբերեն․ և զայլ իմն ներափակեն 'ն ուղղում։ Եկատէս, զիս գրոց սիրողս յափշտակեալ՝ անցեալ զօլ զչափով նա_ մակին․ և սակայն ոչ լռեցուցեալ զօլ զոր կամեցայ։ Յուշք միայն զինչ ինչ ձանա_ չել՝ և որում ընձայլ պարտիմք․ զի և մեք կարասցուք ասել, Փափագեաց անձն իմ, ցանկալ ինձ արդարացուցմանց քոց յամ ժամ։ Որդ՝ այն սոկրատականն ըստ 'ի մեզ․ զայս և եթ գիտեմ, եթէ ոչ գիտեմ։ (Սաղմ․ 118․20։)

## Ձեռնարկէց համառօտիւք և 'ի Նորն Կտակարան ։

Մատ_ Թէոս։ Մարկոս։ Ղու_ կաս։ Յոհան_ նէս։ Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, և Յօ_ հաննէս, չորեքանուեան կառ Տն, և ճշմարիտ քերոբէ․ որ Թարգմանի գիտու_ Թե բազմութիւն․ 'ի ձեռն բոլանդակի մարմնոյ ակնաւորք են, կայծակունք փայ_ լակնեն, տրամընԹանան փայլատակմունք, զոտս ուղորդս ունին, և 'ի բարձունս տա_ րածեալս, զԹիկունս փետրաւորս, և ամ ուրեք սլացեալս․ կալնուն զիրեարս փոխա_ բերաբար, և յիրեարս խառնեցեալք են․ և իբրու զանիւ ներ անուամ Թաւալին․ և ընԹանան, ուրանօր զնոսա փչումն Հոգ_ ւոյն սրբոյ վերաբերեսցէ ։

Պօղոս Առա_ քեալ։ Պօղոս Առաքեալ առ եօԹն եկեղեցիս գրեաց․ զի ուԹներորդն առ Եբրայեցիս, 'ի յոլովից արտաքոյ համարոյ դնի զտիմօ_

Թէոս

թեոս կարգաւորէ, և զտխրս. և զփիլի_ մօն սակս փախստականի ծառային աղա_ չէ ՚ի Տ՟ որոյ բարեգոյն վարկանիմ լուել, քան զսակաւս գրել:

Գործք Առա_ քելոյ.

Գործք Առաքելոյ թէպէտ զմերկ պատ_ մութի երևելին հնչեցուցանել, և ծննդե_ լոյ եկեղեցւոյ զերախայութի ուսուցանել; բայց եթէ ճանաչիցեմք զշարադրող նց զՂուկաս բժիշկ լեալ՝ որոյ գովութիւնն է յԱւետարանի անդ, իմասցուք միանգա_ մայն՝ զամենեսեան զբանս նորա անձին ախտացելոյ դող բժշկականութի:

2. Կորն. 8.18.

Յակոբոս: Պետրոս: Յոհան_ նէս: Յուդայ:

Յակոբոս, Պետրոս, Յովհաննէս, Յու_ դաս, զեօթն թուղթս ՚ի լոյս ածին այն_ քան խորհրդաւորս, որքան շրջապնտե_ ցեալս. և կարճառօտս համանգամայն և երկարս. համառօտս բանիւք, և երկարս զգացմամբք. զի հազիւ լինի թէ ոք ոչ ակնապուժեսցի ներ ընթերցուածումն նց:

Յայտ_ նութի:

Յայտնութիւն Յովհաննու այնքան ունի զխորհուրդս, որքան զբանս. զսակաւ ասա_ ցի, և վս արժանաւորութե մատենին ա՟մ գովասանութի ստորնագոյն է քներ բանից իւրաքանչիւրոց բազմապատիկք ստորա_ դոլին իմացուածք: Աղաչեմ զքեզ եղ_ բայր սիրելագունեղ, ՚ի մէջ սոցա կեալ, զսոսա մտածել, ոչ զայլ ինչ ճանաչել, զոչ ինչ խնդրել: Ոչ արդեօք քեզ երևի արդէն աստ յերկրի արքայութեն երկնայնոյ բնա_ կարանին: Մի գայթագղեսցիս ՚ի գիրս սրբս պարզմտութե, և իբրև գռեհկութե բանից. ոյք կամ սխալմամբ թարգման_ չաց՝ կամ դիտմամբ այսպէս արտաբերեալք եղեն. զի զգռեհկական զքարոզութիւնն դիւրաւ շարակարգեսցեն և ներ մի և նոյն_ նում զգայման այլաբար հմուտն, այլա_ պէս լուիցէ անհմուտն: Ոչ եմ այնքան լիրբ և բիրտ, զի զայսոսիկ ճանաչել զիս խոստացայց, և զպտուղ նց յափշտակել՝ որոց արմատքն յերկինս անկեալք են. այլ կամիլ խոստովանիմ: Նստողին զիս յա_ ռաջբերեմ, վարդապետ զիս ոչ համա_ րեալ՝ ուսումնակից խոստանամ: Խնդրո_ ղին տացի: բաղխողին բացցի: յուզողին գտցէ: Ուսցուք յերկրի, որոց գիտութին մեզ յարամնասցէ յերկինս: Ընդունաջե_ մամբ զքեզ ձեռամբք առ ընկալայց, և (որպէս զի անընթռնաբար զիմն, և զ...եր_ մագօրեայ ամբարհաւաճութեն շաղփաղ փեցից) զորինչ խնդրեսցես, ընդ քեզ գի_ տել ջանամ: Ունիս աստ զսիրականագոյնն քո զեղբայր զԵւսեբիոս. որ զնամակայ քոյ շնորհակալութի կնձ երկպատկեաց՝ վերաբերեալ զհամեստութի բարուց քոյ՝ զարհամարհութի կենցաղոյս, զհաւատ բարեկամութե, զսէր Քի: Զի զխոհե_ մութիդ, և զչքնաղութի բանիցդ, նաև թարց նորա ինքն քարտէսն յառաջբերէր:

Մատթ. 7. 7. Ղուկ. 11.9.

փութացիր, աղաչեմ զքեզ՝ և խրեցելոյ նաւակի ներ ծովու զառասանն յուեա խղեա, քան արձակեա: Ոչ ոք որ հրաժա_ րելոյ է ՚ի կենցաղոյս՝ բարեպէս կարէ վա_ ճառել, զորս քամահեաց զի վաճառիցէր: Զինչ ինչ ՚ի ծախս ՚ի քոյոյն բարձցես, փո_ խանակ շահու համահաշուեա: Նախնեաց ասացեալ է: Ագահին այնքան պակասի զոր ունի, որքան զոր ոչ ունի: Հաւատացելոյն բոլոր երկիր լի է ընչիւք. իսկ անհաւատն դանկի կարօտանայ: Այնպէս կեցցուք, իբրև զոչինչ ունօղս, և զամենայն ինչ ունօղս: Կերակուրն, և հանդերձն՝ փարթամութիւք Քրիստոնէից են: Եթէ ունիս ընդ իշ_ խանութե քով զիրքո, վաճառեա. եթէ ոչ ունիս՝ ՚ի բաց ձգեա: Արձողին զշա_ պիկս, և բաճկոնն թողլի է. այսինքն, եթէ դու, միշտ առ վաղիւն ձգելով՝ և յօրէյօր քարշելով՝ զգուշաբար և սակաւ առ սա_ կաւ զստացուածիկս քոյս ոչ ծախեսցես, ոչ ունի Քս՝ ուստի կերակրեսցէ զաղ_ քատս իւրս: Զբովանդակն Աստուծոյ, որ զիւր ինքն մատոյց: Առաքեալքն զնաւն միայն և զուռկանսն թողին. Այրին եր_ կուս պղնձեղէնս էարկ ՚ի գանձանակն, և նախադասի քան զԿրոսոսի փարթամութին: Դիւրաբար արհամարհէ զամ, որ զինքն միշտ խորհի եւ մեռանելոյ:

Մատթ. 5.40. 2. Կորն. 6.10. Մատթ. 5.40. Մատթ. 4. 18. Մարկ. 12.41. Ղուկ. 21. 1.

~~~~~~~~~~~~~~~~~~~~

Առաջաբանութիւն Սրբոյն Երոնիմոսի Քահանայի ՚ի հինգ մատեանս Մովսէսի. առ Դեսիդերիոս:

Դեսիդերիոսի իմոյ (որ թարգմանի ցանկալի) զցանկալիս ընկալայ զնա_ մակս մաղթողի, (որ ոմամբ նախագուշ_ մամբ ապառնեաց, ընդ Դանիէլի վի_ ճակեալ է անուան,) զի զթարգմանե_ ցեալն ՚ի լատինական լեզու յեբրայա_ կանէ բարբառոյ զհինգ մատեանսն՝ յա_ կանջս մերայնոց առ բերիցէի: Ստուգիւ գործ վտանգաւոր, և հաջմանց չարախօ_ սաց իմոց բացադրեալ. որք զիս ստորասեն ՚ի նախատինս Եօթանասնից թարգման_ չաց զնորս փոխանակ հնոյն ծրագրել: Այսպէս զուշիմունս իբրև զգինի փորձօղք մինչ ես բազմագունիցս վկայեալ իցեմ, զիս փոխանակ այրականի բաժնի ՚ի խո_ րանն ԱՏ մատուցանել՝ զորս կարիցեմ, և ոչ զփարթամութիս այլոց՝ այլոց աղքա_ տութեն ադեղանալ: որ ոչ զի համար_ ձակիցէի, Որոգինէի հմտութին զիս հրաւի_ րեաց, որ ընդ վաղեմի արտադրութե զթարգմանութի Թէոդոտիոնի խառնեաց աստղկաւ, և շամփրաւ զամ զգործ որո_ հեալ: մինչ կամ լուսաւոր առնէ, որք սակաւիկ մի յառաջ եղեալքն էին. կամ զաւե լորդս

Դան. 9. 23.
~~~~~~~~~~~~~~~~~~~~

լորդս համայնս յապաւէ և չարաճակէ ,
մնացեալն զորս աւետարանչաց և Առա_
քելոց հեղինակութիւնն հրատարակեաց ։
ներ որոց զբաղումս 'ի հնոյ կտակարանէն
ընթեռնումք ․ որք ներ մերոց մատենից
ոչ գտանին ․ որգունակ է այն ։ Յեգիպ_
տոսէ կոչեցի զորդի իմ ։ և , Զի Նազովրե_
ցի կոչեսցի ։ և , Հայեսցին յոր խոցեցին ։
և , Գետք յորովայնէ նր բղխեսցին ջրոյ
կենդանութեան ։ և , Զոր ակն ոչ ետես ․ և
ունկն ոչ լուաւ ․ և 'ի սիրտ մարդոյ ոչ ան_
կաւ ․ զոր պատրաստեաց Ած սիրողաց
իւրոց ։ և բազումք այլք , որք յատկի կար_
գաւորման կարօտին ։ Արդ՝ հարցցուք զնս ,
ուրանոր այսոքիկ գրեալք իցեն ․ և երբ
ասել ոչ կարասցեն , 'ի գրոց Եբրայակա_
նաց յառաջ բերցուք ։ Նախորդ վկայու_
թին է 'ի Ովսէէ ։ Երկրորդն յԵսայի ։
Երրորդն 'ի Զաքարիա ։ Չորրորդն 'ի
յԱռակս ։ Հինգերորդն նմանապէս յԵ_
սայի ։ Զոր բազումք տգիտացեալք , ան_
հաւատից գրոց շաղփաղփութեց հետևին ․
և զՀիբերական վերջնական ողբերգութիս
մոռելոց՝ հաւատեցելոց և հանդիսակա_
նաց գրոց նախադասեն ։ Զպատճառս մո_
լորութեան ոչ է իմ բացադրել ։ Հրեայք խո_
հեմ խորհրդով լեալ գոլ ասեն , զի մի
Պտղոմէոս միոյ Այ պաշտօղ , առ Եբ_
րայեցիս ևս զկրկին զԱծութի ըմբռնի_
ցէր ։ Զոր ևս առաւելաբար վն այնորիկ
առնէին ․ քանզի 'ի յաղանդն Պղատոնի
անկանիլ երևիւր ։ Վերջապէս ուր ուրեք
որ գիրն զորբազան ինչ վկայէ զՀօրէ և
զՈրդւոյ և զՀոգւոյն որբոյ՝ կամ այլաբար
թարգմանեցին , կամ ամենևին լռեցին ։
զի և թագաւորի զմիտս հաճեցուսցեն ․ և
զխորհուրդ հաւատոյ ոչ հրատարակեսցեն ։
Եւ ոչ գիտեմ թէ ո՛ որ առաջին հեղինակ
զեօթանասուն սենեակս Աղէքսանդրիոյ
ստութ իւրով կառուցեալ իցէ ։ որովք բա_
ժանեցեալք՝ զնոյնս գրոտեալք իցեն ։ մինչ
Արիստէաս նունոյ Պտղոմէոսի պաշտպան ․
և զկնի յոլովս ժամանակի Յովսեպոս , ոչ_
ինչ զայսպիսի վերաբերեալք իցեն ․ այլ ներ
միում ապարանում ժողովեալս , չարաբե_
րեալ գոլ գրեն՝ ոչ մարգարէացեալ գոլ ։
Զի այլ է մարգարէ , այլ է գոլ թարգման ․
անդ Հոգին զհանդերձեալն նախաճառէ ,
աստ հմտութի և բանից փարթամութի ,
զայնս զորս իմանայ՝ թարգմանէ , եթէ
ոչ դուցէ համարելի է Տուլլիոս , զՏնտե_
սականն Քսենոփոնտին ․ և Պղատոնի
զՊրոտագորայն ․ և Դեմոսթենի սակս
Կտեսիփոնտի զբանս առնչեցեալ ճար_
տասանական հոգւով՝ անդրաբերեալ
գոլ ։ Կամ այլաբար սակս նունոց գրոց՝ 'ի
ձեռն Եօթանասնից թարգմանչացն , այ_
լաբար 'ի ձեռն Առաքելոցն Հոգին սուրբ

Ովսէէ. 11.
Եսայ. 11.
Զաքար. 12.
Առակ. 18.
Եսայ. 64.

ձծա

զվկայութիս ոստայնեաց ․ զի զորմէ նոքա
լռեցին՝ սոքա գրեալ գոլ ասեցին ։ Զինչ
արդեօք , դատապարտեմք զհնագոյնսն ․
ոչ ․ այլ զկնի նախնեացն հմտութեց ․ ներ
տան Տն զորինչ կարեմք , աշխատիմք ։
Նոքա թարգմանեցին նախքան զգալուստն
Քի ․ և զորինչ ոչ գիտէին , երկբայիւք
զգացմամբ արտասանեցին ։ Իսկ մեք զկնի
չարչարանաց և յարութեան նր , ոչ այնքան
զմարգարէութի որքան զպատմութիւն
գրեմք ․ զի այլապէս լուեալքն , և այլա_
բար տեսեալքն ճառեն ․ զոր լաւագունա_
բար իմանամք , բարեգունապէս և արտա_
սանեմք ։ Լուր ապաքէն նախանձաւոր ․
ունկնդիր ընդդիմաճառօղ ․ ոչ դատա_
պարտեմ , ոչ կշտամբեմ զեօթանասունսն ․
այլ վստահաբար հանուրց նոցին՝ զԱռա_
քեալսն նախադասեմ ։ Բերանով սոցա
ինձ Քս հնչէ ․ զորս նախքան զմարգարէս
'իմէջ հոգևորացն շնորհաց եդեալս ընթեռ_
նում ։ ներ որոց գրեթէ զվերջին աստի_
ճան թարգմանիչք կալնուն ․ Ընդէր նա_
խանձու տանջիս ․ Հիմ զմիտս տգիտաց
ըդդէմ ինձ գրգռես ։ Թէ ուրեք 'ի թարգ_
մանութեան քեզ տեսանիմ մոլորել , հարց
զԵբրայեցիս ․ ընդ վարդապետաց զանա_
զանից քաղաքաց խորհրդակցեա ։ Զոր
նոքա ունին յաղագս Քի , քոյսինքն մա_
տեանք ոչ ունին ։ Այլ իմն է , եթէ ներ_
հակ ինքեանց յետոյ 'ի յԱռաքելոց զսե_
փականեցեալս վկայութիս առ ընկալան ։
Եւ ստուգաբանագոյնք են դաղափարքն
լատինականք քան զՅունականսն ․ և Յու_
նականքն քան զԵբրայականսն ։ Հաւաս_
տեաւ զայսոսիկ ընդդէմ չարակնողաց ։
Այժմ զքեզ աղաչեմ Դեսիդերիէ սիրե_
լադունեղ ․ զի մինչ զիս 'ի այսքան գործ
ստորամնանել արարեր , և 'ի Ծննդոց
զսկսուած առնել՝ աղօթիւք օգնեսցես
ինձ ․ որով կարիցեմ նունով հոգւով , որով
գրեցան գիրք , 'ի Լատինականս զնս անդ_
րաբերել բարբառս ։

## Նամակ 'ի յԱւետարանէիցն՝ առ Դամասոս Նախադրութիւն ։

Նոր գործ առնել զիս հարկես առ 'ի
հնոյն ․ զի զկնի դաղափարաց տառից
'ի բովանդակ ոլորտս սփռելոց , իբրու ումն
դատաւոր նստայց ․ և քանզի ներ ինքեանց
զանազանին ․ որք իցեն այնք , որք ընդ
Յունականի ճշմարտութե համաձայնիցեն ,
վճռահատից ․ բարեպաշտօն վաստակ ․ այլ
վտանկաւոր համարձակութի ․ դատել զայ_
լոց՝ ինքն յամենեցունց դատիլոց ․ զծերոցն
փոփոխել զլեզու ․ և զծերացեալ արդէն
զաշխարհ առ սկզբունս մանկանց դար_

ձուցանել ։ Օն ո՞վ ոք հմուտ համայն կամ անհմուտ յորժամ ՚ի ձեռս զմատեանն առցէ և ՚ի կողմնս նորին զոր միանգամ ընկլեալ տեսցէ տարաձայնիլ զոր ընթեռնու՝ ոչ փութանակի յարձակեսցի ՚ի ձայն, զիս խաբեբայ, զիս սեղանակապուտ գոլ գոգցէ՝ որ համարձակիցիմ զինն ՚ի տառս հինս յաւելուլ փոփոխել՝ ուղղել ։ Ընդդէմ որոյ խիթի կրկին պատճառ զիս մխիթարէ ․ զոր և դու որ վեհագոյն քահանայապետ ես, լինիլ հրամայեսս․ և ճշմարիտ ոչ գոլ՝ թէ այլայլեցի․ և ես չարախօսաց վկայութ համահաւատաւի ։ Օն եթէ լատինականաց գաղափարաց ընծայելի է հաւատ ․ պատասխանեսցեն՝ որոց ․ զի այնքան են նախագաղափարք՝ գրեթէ որքան մատեանք ։ Իսկ եթէ ճշմարտութին է խնդրելի ՚ի յոգունց ․ զմէ՞ ոչ առ Յունական բունն անդրադարձեալք, զայնս որք կամ ՚ի յոռեաց թարգմանչաց չարաբար դարձուցեալք, կամ ՚ի յանձնապաստանից անկրթից խեղաթիւրաբար սրբագրեցեալք՝ կամ ՚ի գրչաց նիրհողաց առածեցեալք են, կամ փոփոխեցեալք՝ սրբագրեմք։ Նու ոչ իսկ ես սակս հնոյ վիճաբանեմ կտակարանի, որ ՚ի յեօթանասնից երիցագունից ՚ի Յունական լեզու դարձուցեալ՝ երրորդին աստիճանաւ մինչև առ մեզ եհաս։ Մչ յուղեմ զի ոչ Ակիւղաս, զի ոչ Սիմաքոս խոկայցեն․ ընդ էր Թէոդոտիոն ներ նորոց և հնոց ՚ի մէջն ընթանայցէ։ Այլ այն ճշմարիտ թարգմանութի, զոր առաքեալքն հաստատեցին ․ յաղագս նորոյ այժմ խօսիմ կտակարանի ․ որոյ Յունական գոլն ոչ է երկբայելի ․ բաց յԱռաքելոյն Մատթէոսէ, որ նախորդ ՚ի Հրէաստանի զաւետարանն ՚ի Ն Եբրայականօք տառիւք արտադրեաց։ Այս հաւատեաւ մինչ ՚ի մերս բարբառ տարաձայնի, և ՚ի զանազանս առոճակաց ջրմուղս առածէ․ ՚ի միոյ աղբերէ խուզելի է ։ ՚ի բաց ձգեմ զայնոսիկ մատեանս, զորս ՚ի Ղուկիանոսէ և ՚ի Հեսիքիոսէ վերաձայնեցեալս, սակաւուց արանց ստորասէ խեղաթիւր գրգռութին, որոց արդարև և ոչ ներ բոլանդակում հնոջ գործուջ զկնի Եօթանասնից թարգմանչացն սրբագրել զինն ճահաւորեցաւ ․ և ոչ ներ նորոջ շահ եղև սրբագրեալ գոլ ․ մինչ ՚ի լեզուս բազմաց ազգաց նը գիրն յառաջագոյն անդրաբերեցեալ, ուսուցանէ սուտս գոլ զայնս՝ որք յաւելեալք են ։ Ապաուրենն այս արդենի նախադրութենիկս խոստանայ զչորս միայն աւետարանս ։ որոց կարգն է այս, Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, Յօհաննէս ․ մատենից Յունականաց սրբագրեցելով չարաբերութը, այլ հնոց ․ որք զի մի յոյժ ՚ի սովորութենէ ընթերցուածոյ Լատինականի տարաձայնիցին, այնպէս գրչաւ բարեխառնեցաք, զի զայնս միայն՝ որք զմիտ բանին փոխարկել երևէին ուղղելով, վերամնացելոյն թոյլ տայցեաք մնալ որպէս էին ։ Իսկ զկանօնս, զորս Եւսեբիոս կեսարացի Պամփիլոսու Աղեքսանդրու հետևեալ Ամմոնայ, ՚ի տասն թիւս կարգաւորեաց՝ որպ ներ Յունականումն գտանին, բացադրեցաք ։ Որպ թէ ոք ՚ի հետաքրքրաց կամիցի տեղեկանալ, ո՞ք ներ Աւետարանաց, կամ նոյնք՝ կամ մերձաւորք՝ կամ միայնակք են՝ նոցա տարորոշութին ճանաչեսցէ ։ Արդարև այս մեծ մոլորութի ՚ի մերս մատեանս վերընծիւղեցաւ, մինչ զոր ՚ի նոյնում իրում այլոյն Աւետարանիչ աւելի ասաց՝ յայլում, վս զի պակաս կարծեցին, առյաւելլին ։ Կամ մինչ զնոյն զզգացումն այլոյն այլում բացադրեաց, նա՝ որ զմի ՚ի չորից զառաջներորդն ընթերցեալ էր, ըստ նորին գաղափարի զայլս ևս վարկաւ սրբագրելիս ։ Ուստի պատահեցաւ, զի առ մեզ խառնեցեալքիցեն ամէն, և ներ Մարկոսում յոլովք Ղուկասու՝ և Մատթէի ։ Դարձեալ ներ Մատթէոսում յոլովք Յօհաննու և Մարկոսի ․ և ներ այլոց վերամնացելոց՝ որք այլոց յատուկք են, գտանիցին ։ Այսուհետև յորժամ զկանօնսն ընթերցցիս, որք ստորադրեալք են, չփոթման մոլորութի ստորաբարձեալ, և զնմանս ամենեցուն գիտասցես ․ և իւրաքանչիւրոցն զիւրսն միանգամայն յանդիման կացուսցես ։ Ներ կանօնում առաջներորդում համաձայնին չորեքեանն ։ Մատթէոս ․ Մարկոս ․ Ղուկաս ․ Յօհաննէս ։ Ներ երկրորդում երեքեանն, Մատթէոս ․ Մարկոս ․ Ղուկաս ։ Ներրորդում երեքն, Մատթէոս ․ Ղուկաս ․ Յօհաննէս ։ Ներ չորրորդում երեքեանն, Մատթէոս ․ Մարկոս ․ Յօհաննէս ։ Ներ հինգերորդում երկուքեանն, Մատթէոս ․ Ղուկաս ։ Ներ վեցերորդում երկուքն, Մատթէոս ․ Մարկոս ։ Ներ եօթներորդում երկուքն, Մատթէոս ․ Յօհաննէս ։ Նութերորդում երկուքեանն, Ղուկաս ․ Մարկոս ։ Յիններորդում երկուքն, Ղուկաս ․ Յօհաննէս ։ Ներ տասներորդում իւրաքանչիւրքն զյատուկս, որք ոչ գտանին ներ այլոց՝ արտադրեցին ։ Իսկ իւրաքանչիւրոց Աւետարանչաց՝ ՚ի միոյն սկսեալ մինչև ՚ի վերջն գրոց, տարորոշ թիւ առաճի։ Այս սեաւ գունով ենթադրեալ, ենթ իւքեան ունի վայլ իմն ՚ի խիլգանէ զանազանի գունոյ զթիւ ․ որ մինչև առ տասն յառաջեալ ցուցանէ նախկին թիւն՝ յորում կանօնի իցէ խնդրելի ։ Որդ՝ յորժամ բացեալ ըղ մատեանն, զոր օրինակ, զայս կամ զայն գլխակն գիտել կամիցիս որոյ կանօնի իցէ,

խակոյն

ձևկոյն յենթադրեցելոյ թուոյն ուսուցանիցիս . և վերընթացեալ առ սկզբունսն, ներ որոց կանոնաց է բացորոշեալ գումարն, և նունով կանոնին վաղվաղակի ՚ի վերնագրէ ձախատոյն գտեցելով՝ զայն, զոր խուզէիր զթիւ, նունոյ Աւետարանչի, որ և ինքն ՚ի ներագրութե նշանի, գտցես. իսկ և ՚ի մերձուստ զշաւիղս այլոց տեսեալ, զորս թիւս համդէպ ունիցին՝ առնշանեսցես . և երբ գիտասցես՝ վերընթասցիս առ գրկուկսն իւրաքանչիւրոց . և թարց յամեցման վերագտեցելովք թուովք, զորս նախ նշանակալէիր՝ վերագտանիցես՝ և զտեղիսն ՚ի յորս կամ զնոյնս կամ զնմանս ասասցին : Սակայն գիտելի է զի մի ոք տգիտացեալ ՚ի համանմանութե թուոցն մոլորուհի թաքուսցի, եթէ ուրեք ներ ստորանշանման կանոնաց բացորոշեցելոց, յիւրաքանչիւրում կանոնի երեք Աւետարանիչքն երկիցս, եռիցս, կամ քառիցս, կամ և ս առաւել զնոյն թիւ ՚ի ձեռն կարգի ունիցին առնշանեցեալ, և չորրորդն ՚ի ներհակէ, տարաձայնեալք, եթէ զայն երեքեանն նոքա ներ նոյնում տեղւոջ եզիցս ասասցեն, չորրորդն այնքանիցս ներ մարմնոջ գրգկան իւրոյ դիցէ, որքանիցս զանազանք թիւք ներ կանոնում նորա եդեալք կան՝ ընդդէմ նախասացելոց թուոց չարունակեցելոց նմանութեց : Դարձեալ՝ եթէ ՚ի միում իւրաքանչիւրում նշ՝ կամ և ս երկոցունց ներ կանոնում նոյն թիւ երկիցս, եռիցս, և քառիցս, կամ քան զայն առաւել վերագտանիցի ներ կարգոջ զետեղեցեալ, և տարագոյդ գտանիցին ներ այլոց . երկբայութի ոչ եղիցի, ընդէր այն՝ որ նորա, կամ նշ կանոնի թիւ երկիցս և եռիցս վերակրկնեցեալ յայնցանէ ներ գրգկան եզիցս ասացեալ գոլ ցուցանէ . այլ ոմն այլոյ ումեմն նոյա այնքանիցս միով, և նունով զգացմամբ խօսիցին, որքանիցս յառաջբերեալքիցեն ՚ի համանշանման թուոց զտարաձայնութի : Այլ այս ներ շարաեկութե ամենեցուն ինունց կանոնաց պահեսցի : Բայց ներ տասներորդում (քանզի յատուկք իւրաքանչ իւրոյն միայն և եթ պարունակին.) ոչ կարէ ընդդէմ այնմիկ բաղդատութի լինել՝ որ միայն է : Ողջամ զի Ք.իւ կեցցես, և յիշեսցես զիս, Պապ երանեալ :

Նոյնոյ ՚ի Նախաբանութենէ գրոց Եկեղեցականաց :

Պօղոս Առաքեալ, որ նախ Սօղոս, արտաքոյ թուոյ երկոտասանից Առաքելոցն, ՚ի ցեղէն Բենիամինի, և ՚ի քաղաքէ հրէաստանի Գիսքալիսոյ եղև, որ ՚ի Հռոմայեցւոց դերեցեալ՝ ընդ ծնողաց իւրոց ՚ի տարսոն Կիւլիկիոյ փոխաբնակեցաւ : յորոց՝ սակս ուսմանց օրինաց առաքեալ յԵրուսաղէմ, ՚ի Գամաղիէլէ յառնէ հմտագունէ, զոր Ղուկաս յիշէ, կրթեցաւ : Բայց յորժամ կամակից եղեալ իցէր նահատակութե մարտիրոսին Ստեփաննոսի, և առեալ ՚ի քահանայապետից տաճարին ըղթուղթս առ ՚ի հալածել զայնոսիկ՝ որք Ք.ի հաւատացեալք էին . ՚ի Դամասկոս ճանապարհորդելն՝ յայտնութե ածեալ առ հաւատն, որ ներ գործոց Առաքելոց գրի, ՚ի յանօթ ընտրութեան ՚ի հալածչէ անդրաբերաւ . Այլ մինչ նախապէս առ քարոզութե նորա Սերգիոս Պաւղոս փոխանակ բդեշխին Կիպրոսի հաւատաց, յայնմանէ, զի զնա Ք.ի հաւատոյն ենթարկեալ էր, վիճակեցաւ նմա անունն Պաւղոս : և կցելով ինքեան զԲառնաբայ՝ ՚ի բազում քաղաքս շրջագայեալ, և անդրէն դարձեալ յԵմ, ՚ի Պետրոսէ, և ՚ի Յակոբայ, և ՚ի Յօհաննու, հեթանոսաց Առաքեալ կարգի : Այլ քանզի ներ գործոց Առաքելոց լրագունաբար զկենցաղավարութե նորին գրեալ է : զայս միայն ասացից, թէ զկնի չարչարանաց Տն ՚ի քսաներորդի հինգերորդի ամին, այսէ յերկրորդում ամի Ներոնի, յայնմիկ ամանակի, յորում փեստոս վերակացու Հրէաստանի՝ յաջորդեաց փիլիքսի, ՚ի Հռոմ կապեալ առաքի . և երկեամ ՚ի յընդարձակութե կացեալ պահանորդաւ . ընդդէմ Հրէից յաղագս գալստեանն Ք.ի հանապազ տրամաբանեաց : Այլ գիտելի է, զի յառաջնում բաւարարութե (մինչև էր Ներոնի թագաւորութին հաստատեալ, և ոչ ՚ի յայնքան եղեռնագործութիս զինքն տուեալ՝ որքան զնմանէ ճառեն պատմութիք) Պօղոս ՚ի Ներոնէ արձակեցաւ . զի զԱւետարանն Ք.ի նաև ՚ի կողմանս Արևմտից քարոզեսցէ . ոնց ինքն գրէ ներկրորդում թղթոջն առ Տիմօթէոս . (յայնմիկ ժամանակի՝ յորում և չարչարեցաւ, մինչ դեռ ՚ի կապանս էր՝ գրեաց զթուղթն.) Նառաջնում իմում բաւարարութե ոչոք ինձ ՚ի թիկունս եկաց . այլ ամենեքեան թողին զիս, մի նշ համարեսցի : Բայց Տր ինձ ՚ի թիկունս եկաց՝ և զօրացոյց զիս . զի ինև քարոզութին համալրասցի . և լուիցեն ամենեքեան հեթանոսք . և փրկեցայ ես ՚ի բերանոյ առիւծուն : Յայտնագունաբար առիւծ վն ժպրհութե, զներոն նշանակեալ : Այլ ՚ի հետևեալն, փրկեցայ ես ՚ի բերանոյ առիւծուն : Այլ փութանակի, ազատեաց զիս Տր յամե գործոյ չարէ . և զերծոյց զիս յարքայութե իւրում երկնաւորում : զի արդարև ներկայ ինքեան զգայր վերակայիլ զմարտիրոսութի, Օլ

և ներ նոյնում Թղթոյ առաջարկեալ էր ։ Զի ես այժմէն նուիրեալ եմ և ժամանակ վերալուծման իմոյ ներ կայ ։ Արդ սա 'ի չորեքտասաներորդի տարւոյն Ներոնի, 'ի նոյն օրն յորում և Պետրոս, 'ի Հռոմ վ՜ Բ՜Ն գլխատեցաւ. և թաղեցաւ 'ի ճանապարհորդն Օստիենսի. յամի զկնի չարչարանաց Տն երեսներորդի եօթներորդի ։ բայց գրեաց զխնն թուղթս առ եօթն եկեղեցիս ։ առ Հռոմայեցիս զմի ։ առ Կորնթացիս երկուս ։ առ Գաղատացիս զմի ։ առ Եփեսացիս զմի ։ առ Փիլիպպեցիս զմի ։ առ Կողոսացիս զմի ։ առ Թեսաղոնիկեցիս երկուս ։ Յետ այնորիկ առ աշակերտսն իւր. Տիմոթէի երկուս ։ Տիտոսի զմի ։ Փիլիմոնի զմու ։ Իսկ թուղթ, որ բերի առ Եբրայեցիս, ոչ նորա հաւատալի թուի վասն ոճին և խօսից տարակայութե ։ այլ կամ Բառնաբայի ըստ Տերտուղիանոսի ։ կամ Ղուկասու Աւետարանչի ըստ ոմանց ։ Կամ Կղեմենտի Հռոմայեցւոյ, զկնի Եկեղեցւոյն Եպիսկոպոսի, զորմէ ասեն զվճիռն Պօղոսի յատկաւ բանիւ կարգաւորեալ զոլ և զարդարեալ. կամ հաւատեալ զի Պօղոս գրէր առ Եբրայեցիս. և վասն մաղխանաց իւրոյ անուան առ նոսա, զվերնագիր ներ սկզբան ողջունատրութե քըշտեաց. գրեաց իբրու Եբրայեցի Եբրայեցւոց Եբրայեցերէն. այսէ, իւրով բարբառով պերճաբանօրէն. զի այնք, որք ճոռոմաբար գրեցեալքէին 'ի Եբրայականում. ճառտագունաբար անդրադարձուցեալք լինէին 'ի Յունական. և զայս պատճառ զոլ՝ զի յայլոց թղթոց Պօղոսի այլաբար գրիլ երևի ։ ընթեռնուն ոմանք և առ Լաօդիկեցիս. սակայն յամենեցունց արտասահմանի ։

Երոնոյ 'ի Թուոյ ճառաբանութե գրոց Եկեղեցականաց ։

Յակոբոս, որ յորջորջի եղբայր Տն, մականուամբ արդար. (ոմն ոմանք վարկանին Յովսեփայ, յայլմէ կնոջէ. բայց ոմն ինձ երևի, Մարիամու քեռ Տիրամօրն, զոր Յովհաննէս ներ գրոց իւրոց յիշատակէ, որդի,) զկնի չարչարանաց Տն, փութանակի յԱռաքելոցն Երուսաղէմի եպիսկոպոս կարգեալ. զմի միայն ծրեաց զթուղթ, որ յեօթանց կաթուղիկեայցն է. որ և այն յայլմէ ումեմնէ ենթ անուան նր արտադրեցեալ ստորասի ։ թէպէտ սակաւ առ սակաւ յառաջացմամբ ժամանակի ընկալաւ զհեղինակութի ։ Եգեսիպպոս մերձաւոր Առաքելականաց ժամանակաց, ներ հինգերորդում մատենում մեկնութեց յաղագս Յակոբու ճառելով, ասէ, ընկալաւ զԵկեղեցին Եմի, զկնի Առաքելոցն, եղբայր Տն Յակոբոս, մականուամբ արդար. որովհետև բազումք Յակոբք կոչէին ։ Սա յարգանդէ մօր սրբեցաւ, զգինի և զօղի ոչ էարբ, զմիս ամենևին ոչ եկեր. ոչ երբեք գերծաւ, ոչ օծաւ օծանելեաւ. և ոչ վարեցաւ բաղանեաւ ։ սմա միայնոյ ընդ Սրբութի մտանել 'ի սրբութի սրբութեց. որովհետև համդերձիւք առէնլինօք ոչ վարիւր, այլ կտաւենեօք. և միայն մտանէր 'ի տաճարն. և 'ի ծունկս անկեալ վասն ժողովրդեանն աղաչէր, այնքան մինչ զի զխստութի ուղտուց առքարշեալ զոլ ծունգք նորա հաւատալիք գոյին ։ Ասէ և զայլս յոլովս, զորս վերաթուել երկար է ։ Այլև Յովսեպոս ներ քսաներորդում մատենում նախնականաց վերաբերէ. (և Կղեմէս 'ի յեօթներորդում) 'ի մեռանելն փեստոսի, որ զՀրէաստան կառավարէր, առաքեցեալ 'ի Ներոնէ լինիլ փոխանորդ նր Աղբինոս. որ մինչ չև 'ի գաւառն հասեալ էր, Անանիաս, ասէ, քահանայապետ մանուկ, Անանիայի որդի, 'ի ցեղէ քահանայական է, առեալ զառիթ, զատեանն ժողովեաց՝ բռնադատեալ հրապարակօրէն զՅակոբ, զի զՔս զորդին Այ 'ի բաց ուրասցի. որ մինչ զընդդէմն ասաց՝ քարկոծիլ հրամայեաց. որ յորժամ գահավիժեցեալ յաշտարակէ տաճարին, ջախջախեցելովք սրունօք, դեռևս կիսակենդան՝ տարածեալ զձեռս յերկինս՝ ասէր. Տէր մի համարիր սոցա. զի զորինչ առնեն, ոչ գիտեն, բրով թափչի՝ որով զզգեստս գէջս քամիլ սովորեն, է գագաթն հարկանեցեալ՝ մեռաւ ։ Աւանդէ դարձեալ Յովսեպոս, զնա այնքան սրբութե լեալ, և գերահռչակութե 'ի ժողովրդեանն, մինչ զի վն սպանմանն նր, հաւանելի իցէ վրդովեալ զոլ զԵմ ։ Սա է՝ վն որոյ Պօղոս Առաքեալն գրէ առ Գաղատացիսն. Այլ զայլոց առաքելոցն ոչ տեսի, եթէ ոչ զՅակոբոս զեղբայր Տն ։ և գործք Առաքելոցն 'ի վր սորա բազմիցս վկայեն ։ Աւետարանն ևս, որ յորջորջի ըստ Եբրայեցւոց. և յինէն նարգմանս 'ի Յունական և 'ի Լատինական բարբառս անդրադարձեցաւ, որով և Որոգինէս յաճախապէս վարի, զկնի յարութե փրկչին վերաբերէ ։ իսկ Տրն յորժամ տուեալ էր զպաստառակալն ծառայի քահանային, գնաց առ Յակոբոս՝ և երևեցաւ նմա ։ Քանզի երդուեալ էր Յակոբոս՝ ինքն ոչ ճաշակել զհաց յայնմանէ ժամէ, յորում ըմպեալ էր զբաժակ Տն, մինչև տեսցէ զնա յարուցեալ 'ի մեռելոց ։ Եւ դարձեալ զկնի սակաւու ։ Մատուցէք, ասէ Տր, զսեղան և զհաց ։ Եւ առժամայն առադրի

էառ

կառ զհացն. և օրհնեաց, և մանրեաց, և ետ Յակոբու արդարոյ ։ և ասաց նմա, Եղբայր իմ, կեր զհացդ. զի յարեաւ Որդի մարդոյ 'ի ննջեցելոց։ Երեսնօք ամօք այնուհետև կառավարեաց զեկեղեցին Երուսաղէմի։ այս է մինչև յեօթներորդ ամն Ներոնի. և հանդէպ տաճարին, ուր գահավիժեցաւ, թաղեցեալ է։ Զարձանագիրն մինչև 'ի պաշարումն Տիտոսի, և 'ի վերջին պաշարումն Ադրիանի ծանօթագոյն ունեցաւ։ Ոմանք 'ի մերայնոց 'ի Լերին Ձիթենեկանի զնա թաղեալ վարկանին. բայց սուտ է նոցա այն կարծիք։

Նոյնոյ 'ի Թուածաբերութէ գրոց Եկեղեցականաց։

Սիմոն պետրոս որդի Յովնանու. գաւառաւ Գալիլեացի, գեղջէ բեթսայիդայի. եղբայր Անդրէի Առաքելոյ, և իշխան Առաքելոց. զկնի եպիսկոպոսութեան Անտիոքիոյ Եկեղեցւոյ, և քարոզութեան սփռման նոցա, որք 'ի թլփատութենէ հաւատացեալք էին, ներ Պոնտոսում, Գաղատիայում, Կապադովկիում, Ասիայում, և Բիւթանիում յերկրորդում տարւոջ Կղօդիոսի առ 'ի պարտել և խայտառակել զՍիմոն մոգն 'ի Հռոմ գնայ։ իսկ անդ քսան և հինգ ամօք զաթոռ քահանայապետական կալաւ, մինչև 'ի վերջին ամն Ներոնի. այս է տասներորդ չորրորդ։ Յորմէ և բևեռեալ 'ի խաչի, մարտիրոսութեամբ պսակեցաւ։ գլխով յերկիր դարձուցելով. (այսինքն գլխիվայր։) և 'ի վեր ոտամբք բարձրացելովք. ասելով զինքն անարժան՝ զի այնպէս խաչեսցի, որպէս Տէրն իւր։ Գրեաց երկուս թուղթս, որք կաթուղիկեայք անուանին, որոց երկրորդն. 'ի յոգունց նորին ել՝ բացասի սակս ոճին ընդ առաջնոյն տարաձայնութեան։ Նա և Աւետարանն ըստ Մարկոսի, որ ունկնդիր նմա և թարգման եղև, սորին ասի։ Իսկ գիրք՝ յորոց մինն գործոց նորա մակագրի, միւսն Աւետարանի, երրորդն քարոզութեան, չորրորդն յայտնութեան, հինգերորդն դատաստանի՝ 'ի մէջ անստուգից մատենից վերաթուին։ Թաղեալ 'ի Հռոմ ներ վատիկանում, հանդէպ ճանապարհին հռչակաւորի, բոլանդակի քաղաքին մեծարանօքն տօնախմբի։

Նոյնոյ 'ի Թուածաբերութէ գրոց Եկեղեցականաց։

Յուդաս եղբայր Յակոբու, թէպէտ ըղ փոքրիկ, որ յեօթանց կաթուղիկէից է, զԹուղթ եթող։ Այլ քանզի 'ի մատենէն Ենովքայ՝ որ անհաւաստ է, 'ի նմին առնու զվկայութիւն, 'ի յոլովից իսկ 'ի բաց ձգի։ սակայն զհեղինակութիւն հնութեամբ արդէն, և սովորութեամբ արդիւնաւորեցաւ. և 'ի մէջ սրբոց գրոց համաթուի։

Նախադրութիւն Մատթէոսի Աւետարանին։

Աւետարան որ ըստ Մատթէոսի գրեալ է։ Զի ինքն Մատթէոս աշակերտ Տն̃ գրեաց զԱւետարանս զայս։ Այլ պատմէ մեզ 'ի սկզբանն զըստ մարմնոյ ծնունդ Քրիստոսի 'ի զաւակէ Դաւթի. վասն որոյ և զազգահամարն ժողովէ մինչև 'ի Քն̃ ազգս քառասուն և երկու. բերէ զ̃ կարգի և զմկրտութիւն Յովհաննու, և 'ի լերինն 'ի դիւաց զփորձութիւն։ Այլ զնշանս և զարուեստս մեծամեծս 'ի Քրիստոսէն եղեալս. և զընտրութիւն աշակերտացն. և զն̃ խորհրդոյ մատնութեան. և զկատարածն. զի մատնեցաւ Պիղատոսի. և խաչեցաւ մարմնով. և մարմինն եդաւ 'ի գերեզմանի. և զինուորքն բաժանեցին զհանդերձս նորա։ Նոյն և զերրորդ աւուր յարութիւնն. և զպատուէր աշակերտացն աշակերտել զամ̃ հեթանոսս, և մկրտել զնս̃ պատուիրեաց. լինել ընդ նոսա զամ̃ աւուրս մինչև 'ի կատարած աշխարհի խոստացաւ։

Նախադրութիւն Մարկոսի Աւետարանին։

Աւետարանս որ ըստ Մարկոսի գրեալ է։ սոյն Մարկոս աշակերտ Պետրոսի, և ընթացակից Պօղոսի՝ գրեաց զԱւետարանս զայս. և դնէ զսկիզբն և ասէ. Սկիզբն Աւետարանի՝ 'ի Յովհաննու քարոզութենէն. և զմկրտութիւն Յովհաննու՝ և առնու ըղ վկայութիւն յեսայեայ մարգարէէ։ Նշանակէ և զփորձութիւն 'ի լերինն. և ոչ ասէ զփորձանսն։ Պատմէ և վասն ընտրութեան աշակերտացն. և զնշանս և զարուեստս զօրս արար. և զխորհուրդ մատնութեան, և զկատարածն. որ և մատնեցաւ Պիղատոսի. և խաչեցաւ մարմնով. և զի զինուորքն բաժանեցին զհանդերձս նր̃. և զի մարմինն եդաւ 'ի գերեզմանի. և յարեաւ երեքօրեայ. և 'ի զիջանել հրեշտակին. և երևիլ կանանցն. և զնոյնն պատմել աշակերտացն։

որք փարենթազիսն շրջափակեցան։

Դ Իսկ որքան առ երրորդն՝ որ էր 'ի վրիպմանց թարգմանութեն, թէ զայնս որք զոչ իմն բան նշանակէին, և թէ զայնս, որք զօտար իմն բան յառաջբերէին, հայելով 'ի լատինն յորմէ թարգմանեցեալք էին՝ սրբագրեցաք ըստ որում և պիտոյ էր. և այնու եկին 'ի նշանակութի. որպ և տեսանի ։ Զոր օրինակ 'ի կարգս այբին եդեալ էր. [illegible]։ Արդ՝ այս բնաբան ոչ կարէր հասկացեալ լինել ։ Ուստի սրբագրեցաւ և եղաւ այսպէս։ [illegible]։

Դարձեալ 'ի նոյն կարգի եդեալ էր. [illegible]։ Փոխանակ գնելոյ. [illegible]։

'Ի կարգս եչին եդեալ էր. [illegible]։ Փոխանակ գնելոյ։ [illegible]։

Դարձեալ 'ի նոյն կարգ եդեալ էր։ [illegible]։ Փոխանակ գնելոյ. [illegible]։

'Ի կարգս նուին եդեալ էր զբառս, [illegible]. փոխանակ բառիս՝ [illegible]։ և այս յայտ է նաև այսու, զի 'ի ներքոյ իւր եդեալ համարաթիւքն յղեն միշտ յայնս տեղիս՝ ուր են բանք զբամբասանաց։ Վասն որոյ և մեք եդաք անդ՝ այսպէս. [illegible]։

'Ի կարգս չային եդեալ էր. [illegible]։ Այս բան ևս անմեկնելին զիր ինչ ոչ նշանակէր. և եթէ նշանակել ասիցէ ոք, հարկաւորի ասել՝ թէ Ոճ զչարն առաջնորդ ինքեան ունիցի. զոր քաւ լիցի ասել։ Արդ՝ այս բան գնելի էր այսպէս, որպ և իսկ եդաք. [illegible]։

'Ի կարգս պէին եդեալ էր. [illegible]։ Փոխանակ գնելոյ. [illegible]։ Ըստ այսոցիկ իմա և զայլս նմանս. զորս վն հարկի Ճշմարտութե վերուղղեցաք՝ թէ 'ի ցանկսն, և թէ 'ի բանս Գերոնիմոսի, և 'ի Բովանդակութե, որ դնի 'ի սկզբան Ածաշնչին. և 'ի յայնս ամենս զորս 'ի լուսանցսն եդեալ էր սխալաբար. զորս մտադրաբար ընթերցողն՝ եթէ 'ի միասին եդեալ զմերն, և զնորայն՝ համեմատելով ընթեռնուցու, յայտնապէս տեսանէ զհարկաւորութի վերուղղեցմանս։

Ե Արդ՝ զայս ամ զոր առ 'ի ցուցանել զՃշմարտութի իրին՝ իբրու հարկադրեցեալ 'ի նոյնոյ Ճշմարտութէ, բացատրեցի, ոչ կամիմ, և ոչ դիտեմ զի այն ինչ 'ի մեղադրութի նորին վերածիցի. այլ 'ի ձեռն այլոց արդիւնաւոր աշխատութեց նորին որ 'ի վր ամ ածաշնչին՝ թէ 'ի գլխակարգեսն զայն, և թէ 'ի թարգմանելն զցանկն, և զայլսն՝ մանաւանդ գովութե արժանի համարիմ զնա ։ Բայց թէ վրիպեցաւ յոմանս տեղիս, այն ոչ է զարմանք. զի նա, յորժամ բուռն եհար զայսմանէ գործոյ, երեք ամք միայն էին յորմէ հետէ մտեալ էր յեւրոպիա. և զայն սակաւ ժամանակն ևս ծախեալ 'ի հոգս տպարանին համդերձ բազմօք տառապանօք։ Արդ՝ մինչ այսու ամե այնքան հմտացաւ լատինականի լեզուին՝ որով կարաց զայնքանս թարգմանել, նոյնն յայտ մեծագունեղ երևի լինել քան զայս, զի իցէր երեսուն և երեք ամաց հետէ մտեալ յեւրոպիա, և տուեալ զինքն ուսման լատինականի լեզուի, և այնպէս ուղղապէս գնիցէր զայնս վերոեդեալս, որպ այժմ եդան. և կամ թէ այնպէս գնիցէր զմնացեալս, յորս յոչ իմիք վրիպիցիւր։

Զ Աստ գիտելի է. զի որք ըղձան 'ի գործածել 'ի յուսման ամ Ածաշունչ գրոց զբնաբանս ցանկին, և ըստ այնց գտանել զբանս, և զարգանալ 'ի յուսումն ամ ածային գրոց, և 'ի հասկացումն մտաց բանին. մինչ 'ի ձեռն համարաթուոց գտանեն զբանս, ոչ պարտին հայիլ միայն 'ի բառս բանին, այլ նաև 'ի միտս և 'ի նշանակութի նորին. 'ի ձեռն որոց համաձայնի բնաբանին. ապա թէ ոչ՝ մինչ ոչ յամ ուրեք նաև որքան առ բառսն պատասխանէ բանն գտանիցեալ՝ բնաբանի ցանկին, կարէ վարկանիլ՝ թէ համարաթիւքն սխալեցեալ իցեն 'ի տպագրելն, և կամ մեք ոչ իցեմք տեսեալ զսխալ գոլն այնորիկ համարաթուոց ։

Զոր օրինակ 'ի կարգս տառին [illegible], ուր ասի. [illegible]. և պարզաբանի. [illegible]. համարաթիւքն որք առաքեն առ 16. գլուխն մատթէոսի. 'ի 24. տունն, բառքն յայտնապէս պատասխանեն բնաբանի ցանկին. զի անդէն յիշեցեալ լինի. ուրացումն անձին ։ Բայց մինչ առաքեն համարաթիւքն առ գիրս ծննդոց. 12. 4. անդէն բառքն բացայայտաբար ոչ պատասխանեն բնաբանի ցանկին, որովհետև 'ի նմին տեղւոջ ոչ յիշի, ուրացումն անձին։ Սակայն այսու ամե ոչ է ասելի թէ համարաթիւն սխալեցեալ է ։ Քանզի անդէն՝ թէպէտ բացայայտաբար ոչ յիշի ուրացումն անձին. սակայն մինչ յիշի ելանելն աբրահամու յերկրէն իւրմէ, նոյնն ևս է ուրացումն անձին։ Ըստ այսմ և կամիլն մատուցանել զորդին իւր պատարագ Ած, է

ուրա_

ուրացումն անձին . վ՟ որոյ մեւս հետեւեալ
համարաթիւն առաքէ և անդ ։

Այսպէս և 2. օրինաց . 33. 9 ։ (ուր ասի . Որ ասէր ցհայր իւր և ցմայր իւր՝ թէ ոչ տեսի զքեզ, և զեղբարս իւր ոչ ծանեաւ, և զորդիս իւր ոչ գիտաց, զի պահեաց բանից քոց. և զուխտ քո պահեաց ։) Մէ երեւի յիշել ուրացումն անձին. բայց նշանակութիւն բանին է առ այն ։ Վասնզի որ վասն զգուշանալոյ 'ի մեղաց, և կամ վ՟ պահելոյ զհրամանն ա՟յ և զճշմարտութիւն հաւատոյն իւրէ պատրաստագունիւ՛ 'ի պահանջել հարկին 'ի բաց թողուլ զծնօղս, և զեղբարս, և զորդիս՝ այնպիսին իրաւի զանձն իւր ուրացեալ է ։ Մ՟զի 'ի նմին բանի գրէ թէ զայս ասէ մօսէս . ո՞վ է որ զգուշացաւ բանից քոց՝ Տ՟ր, և ո՞վ է այն որ պահեաց զուխտ քո, եթէ ոչ նա՝ որ 'ի պահանջելն հարկին՝ վ՟ պահելոյ զուխտ քո, ասէ ծնողացն, և եղբարցն, և որդւոց իւրոյ՝ թէ ոչ տեսի, ոչ ծանեայ՝ և ոչ գիտեմ զձեզ. և այլն ։ Ըստ այսմ ենթադատելիք են և այլք բանք՝ առորս առաքեն համարաթիւք ցանկին. զի մի՛ գուցէ լինիցի սուտ վարկումն, թէ ոչ համապատասխանեն
բանք գրոցն՝ բնաբանի ցանկին ։

Բայց թէ 'ի տպագրեցման այսորիկ ա՟ծաշնչի՝ զորքանս ջանս և զհոգս, զորքանս երկուսն՝ և զաշխատանս յանձին կալեալ՝ 'ի գործ եդաք՝ ո՞չ զի մի՛ գուցէ վրիպմամբ՝ 'ի տպագրիչն իւր զսխալանս ոմանս յինքեան վերընդունիցի, ոչ կարէ ընդ գրով արկանիլ. Վասնզի նախապէս երկիցս հայելով 'ի յօրինակն՝ լինիւր մաքրեցումն սխալանաց տպագրութե՟ն նորին . և ապա մինչ շարաբարդիւր յայնմանէ մաքրեցելոյ օրինակէ՝ և եզերեցել տպագրիւր, նոյնն յերից և 'ի չորից անձանց ընթերցեալ լինիւր . և այնու 'ի սխալանաց շարաբարդողին մաքրիւր . և մինչ շարաբարդօղն զայնս սխալանս իւրս սրբագրեալ ուղղէր ա՟յ որում համանշանեցեալքէին 'ի մէնջ, վերստին տպագրէր զնոյնն . և մեք զայն վերստին ընթերցեալ երկիցս, և կամ երիցս՝ եթէ նաև զայլս սխալանս գտանիցեաք, վերստին համանշանեալ և զայնս՝ տայաք սրբագրել . և ապա եդեալ լինիւր 'ի մամուլն տպագրողական . և մինչ տպագրիւր մի, և կամ երկու երես թղթոյ, վերստին և անդէն համեմատիւր տպագրեցեալն այն ընդ վերջնոյ սրբագրեցելոյն . զի մի՛ գուցէ 'ի դնելն զտախտն 'ի մամուլն, և 'ի ամրացուցանելն զայն անդէն՝ վրիպումն ինչ իցէ եղեալ ոմանց տառից . և յորժամ տեսանիւր բարւոք համեմատիլ, և վրիպումն ինչ ոչ եղեալ՝ ապա հրամայն տաւէլ լինիւր գործաւորացն տպագրել ։ Իսկ առ այս գործ սրբագրութե՟ն զվեց անձինս բացորոշեալէի ընդ իս 'ի մենաստանի աշխատիլ . և զմիւս այլ 'ի տպարանի . զի զվերջնոյ տեսութե՟ն զհոգն ունիցի և համեմատիցէ զտպեցեալն՝ ը՟ սրբագրութե՟նց եղելոց ։

Իսկ որքան առ բարւոք գոլն այսորիկ մատենի 'ի թուղթս՝ 'ի պատկերս՝ 'ի ծաղկագիրս՝ և 'ի տպագրութիս, այնքան առաւելան ծախքն, մինչ զի հաւասարեցան հազարակ ծախիցն . և այնու գրեթէ կրկնապատիկ եղև ծախն տպագրութե՟ն սորին ։ Մ՟զի եթէ փոքր ինչ թխագոյն և հասարակ թղթով իցեաք տպագրեալ, և առանց ազնձեայ պատկերաց՝ թարց կարծեաց զոր ինչ ծախեցաք 'ի տպագրութե՟ն սորին, կէսն նորին բաւականանայր ։ Բայց մինչ 'ի կեանս իմ երկիցս ոչ էի ծառայելոյ բարւոյն՝ և հոգևոր օգտին ազգին իմոյ տպագրութե՟ ա՟ծաշնչին՝ (որովհետև մերձ եմ այժմ եզերել զվաթսներորդ ամն կենաց իմոց) յօժարութե՟ յանձն առի զկրկնապատկութե՟ն ծախից, ընդ նմին և աշխատանաց . ո՞չ զի նաև յազգի մերում ազնձեայ պատկերօք՝ ազնիւ թղթով քյարմարագոյն գրօք՝ և բարւոք ծաղկագրովք ա՟ծաշունչ գտանիցի ։ Իսկ առաւելութի ծախիցն զոր ասացի՝ մանաւանդ եղև առ փորագրութե՟ն ազնձեայ տալից պատկերաց . որք բաց 'ի պահանջելոյն զմեծագոյն ծախս առ փորագրութե՟ն, պահանջեն նաև զառանձնական տըպութե՟ն ։ Մ՟զի ոչ կարեն ո՞չ զփայտեայ տիպս պատկերաց 'ի միասին ընդ արձճեայ գրոց դնել, ո՞չ զի միով տպմամբ վճարիցի գործն . այլ առանձնաբար յայլմէ արհեստաւորէ, և այլով գործարանաւ լինի տպութի՟ն նոցին ։ և այսու բազմապատկի նաև ծախն տպման ։ Սակայն մեք ոչ հայելով առ բազմութի՟ն ծախիցն, այլ առ գոլն լաւագոյն, որքան և պահանջեցաւ առ ծախսն՝ ոչ խնայեցաք . ո՞չ զի ա՟ծաշունչն մեր նաև ըստ պատկերացն լինիցի ազնուագոյն ։

Արդ՝ մինչև ցայս վայր՝ զորոց 'ի վեր անդր խոստացայ ասել, ասացի . և այժմ 'ի վերջաւորութեան բանից իմոց ասեմ և զերկուս ։ Նախ՝ զայս, թէ ոչ ումեք պարտ է յանդգնիլ առ 'ի սրբագրել զինչ 'ի սբ՟ գիրս, կարծելով զայն սխալանք գրչաց, եթէ ոչ ունիցի առաջի աչաց զբազումս թարգմանութիս, և մանաւանդ զայնս՝ յորոց մերս է թարգմանեցեալ . վասն զի բազմիցս հանդիպին ոմանք բառք, և բանք, որք երեւին սխալաբար գրեցեալք, բայց ոչ են այնպէս . որպէս . 'ի 63. սաղմոսին՝ յայնմիկ տան՝ յորում ասի, Հիւսեցին զանօրէնութիւն, պարտասեցան 'ի խնդիլ զանօրէնութիւն ։ 'ի բազումս տպագրեցեալ և գրչագիր սաղմոսս, և 'ի ժամագիրս՝ (բաց 'ի յոմանց սակաւուց) սրբագրեալք են զբառս զայս՝ Պարտասեցան . և եդեալ, Պարտաւեցան ։ Կարծելով՝ թէ բառս Պարտասեցան, իցէ սխալ . բայց ոչ է սխալ, այլ ճշմարիտ և հարկաւոր ։ Վասնզի բայս այս Պարտասել, 'ի մերս բարբառ նշանակէ յաղթեցեալ լինել, կամ պակասել 'ի յուժոյ, և կամ պարտիլ ։ և նախնիքն մեր ա՟յ որում տեսին 'ի յոյնս՝ և յասորիս՝ յորս էր այնպ, եդին՝ Պարտասեցան ։ որով նշանակի՝ թէ մինչ ամբարիշտքն զա_

զանօրէն խորհուրդ_ խորհին ընդդէմ որ_
դւոյ, մինչ պարտին 'ի յուժոյ խորհելոյ
զխորհուրդ կատարել ։ Եւ բայց այս՝ Պօղոս_
սի՝ զոյ նաև զաստ-որաց. 8. 4 ։ Որ ասէ. պար_
տաւորք՝ եմք զտկարաց պակասեալք 'ի յուժոյ
և քաղցեալք ։ Հռովմ. 16. 16. ասէ. պարտաւորեցոյց
զնա մինչև ցմահ., թուլացոյց՝ և պակասեցոյց
զնա մինչև 'ի ս. ։ Արդ՝ զայս բան օրինակի
մն եդի, ոչ զի ոք զգուշասցի՝ և ոչ յանդգ_
նեսցի զհետ բանից և բառից սբ գրոց լինել.

Երկրորդ՝ այս առեմ. Ռաքեալն Պօղոս
կամէր լինել նզով լինել 'ի Քէ մն եղ_
բարց և ազգականացն. և այս ոչ էր այնպէս,
իբրու թէ զազգն առաւել սիրեցեր քան զՔս,
'ի սիրոյ որոյ ոչ ոք կարէր մեկնել զնա. այլ կա_
մելովն զոյն՝ ցուցանէր զմեծութի սիրոյն զոր
ունէր առ օգուտն ազգին իւրոյ. որոյ մն և
հոգւովն շափ աշխատէր վասն նց, և ոչ երբեք
ձանձրանայր թէ և 'ի վեր քան զչափն խոստե_
ցեալ իւիւր 'ի նոցանէ ։ Բստ այնմ և ես ջա_
նալով հետևիլ հետոց առաքելոյն, որքան կա_
րեմ, և որչափ կենդանի եմ, ջանամ աշխատիլ
մն հոգևորի օգտի և շահաւէտութե ազգին
իմոյ. թէև երբեմն մն Աձմարտութե հաւատոյ
իցեմ յոմանց 'ի նոցանէ խոստեցեալ, և կամ
միայն խոստիցիմ ։ Մն որոյ ոյք և իցեն որք զի_
նէն խորհին, և կամ ընդ ընկերս իւրեանց
խօսին, զայս և եթ ծանիցեն ։ Ոի թէպէտ
սիրեմ զազգն իմ, և զաշխատիլն մն օգտի նր,
բայց այնու սիրտն իմ 'ի յուղղափառն դաւա_
նութե հաւատոյ սբ եկեղեցւոյն հռոմայ ոչ
երբեք մեղկանայ ։ Եւ հակադարձաբար՝ թէ_
պէտ ըստ ամի սատարակեցեալ եմ և սատարակա_
նեմ զիս մինչ 'ի ներքոյ հնազանդութե գահին

հռոմայ, ա որում և Հայրն մեր սբն Գրիգո_
րիոս Լուսաւորիչն ինձ օրինակ կայ, բայց այ_
նու սէրն իմ և ջան աշխատանացս առ օգուտն
ազգին իմոյ (թէ և զիս մն այսպիսւոյ հնազան_
դութե քամահիցէ) ոչ երբեք թուլանայ ։ Եւ
եթէ նաև մն այսպիսեաց իմոց առութեց 'ի
կեանս յայս յամենից մարդկանց, և կի յոմանց
խոտիլ և առ ոչինչ համարիլ ինձ առաջի կայ,
զայն ես յօժարաբար ընդրկեմ. թէ իցէ այս
ներկայ, և թէ ապագայ ։ Քանզի զոչինչ փո_
խարէն սիրոյ և աշխատանաց իմոց պահանջեմ
յազգէն իմմէ, և յիւրաքանչիւրոց ընթերցո_
ղացդ զայս մատեան. այլ բաղձամ, և ըղձա_
կերտեմ զայս միայն, զի դուք օգտիցիք, և
զդեղս փրկարարս հոգւոց ձերոց յայսմանէ
սբյ մատենէ վերընդունիցիք, և 'ի սէր ըն_
թերցման սորին օր ըստ օրէ բորբոքիցիք.
որով զորս պարտիք առնել և հաւատալ, առ_
այնս փութասջիք. և յորոց պարտիք 'ի բաց
կալ, յայնցանէ հրաժարեսջիք. և այնու զփր_
կութի հոգւոց ձերոց ապահովս արասջիք ։
Քանզի իսկական պտուղ ընթերցմանց գրոց
սբց է նախահոգալն զփրկութէ հոգւոյ իւրոյ՝
և այլոց ։ Եւ յորժամ քաղցրացեալն բանքն
այ ծայլինք 'ի հոգիս ձեր, և զմայլիցիք, և այնու
կայծիւ բանից սբ գրոց միտք և խորհուրդք
ձեր 'ի սէրն այ և պատուիրանաց նորին վա_
ռիցին, զանձն իմ պարտաւոր, նաև զնոսին
որք աշխատակիցք եղեն ինձ, միով հայրմե_
րիւ, և ողջունիւ յիշման արժանի համարես_
ջիք. որոյ զփոխարէնն և դուք բազմապատ_
կաբար ընկալջիք 'ի Քէ Տնէ մերմէ. յորմէ
այ, որով այ, և յորում այ, և նմա փառք 'ի
յայ յաւիտեանս. Ամէն ։

Չերում Ազնուականութէ



Նուաստ ծառայ անպիտան, Մխիթար Վրդպտ
Սեբաստացի. Աբբայ Հայր կոչեցեալ՝ անարժան ։

Արև զմատեան իմաստութեան,
ստեղծ Տէր զնա այս մի։
Մտաց մարդկանց եւ քննելի,
այնու զգօլ իւր ճանաչելի։
Խնամօղ տիրօղ ստեղծօղ և մի,
ինքն միայն գոլ պաշտելի։
Դիւրահնարից բանականաց,
զտիւ և զգիշեր միշտ գովելի։
Թէպէտ գիրքս այս էր մեծ բարի,
և բազմազան իմաստութեան լի։
Այլ ոչ յայտներ մեզ զՀայր զՈրդի
և ընդ նոսին ըզ Սբ Հոգի։
Բամից մնաց գաղտնեաց գաղտնի
զմարդեղութիւն միածնի։
Եւ նոյն և զմերս երջանկութիւն,
ըզ գերբնականն այն ցանկալի։
Յաճել Տէր զերկրորդ գիրք մի,
ծածուկ սբ մատենի։
Մարթիլ նուազ յիմաստ բանի,
բընականի գերբնականի։
Եւ նոյն զկանոն բարւոյ կենի,
բընականաւ յուցմամբ բանի։
Բամել զմիտ մեր 'ի հաւատալ,
գերբնականացն յամենայնի։
Դուռն իմաստից սորին դնի,
խոնարհութիւն Է երկիւղի։
Եւ այն որք ըզ միտս ունի,
դիւրաւ զիմաստս այս ուսանի։
Պարագայիւք և ըստ ոճի,
իմացուածոց նորին բանի։
Եւ անայլթագ պատասխանէ,
մինչ զայնմանէ հարցափորձի։
Տըրակ է սա գրեալ յերկնի,
ձեռամբ մերոյ ըստեղծողի։
Եւ առաքեալ յերկնուստ անտի՝
առ մեզ որք եմք ընկեր յերկրի։
Սիրալրական բանիւքէ լի,
խոստմունք բարեացն անթուելի։
Եւ 'ի մէնջ ոչ խնդրէ զայլ ինչ,
միայն զօգուտ մեր և զբարի։
Բայց թէ որքան պատուոյ մեծի,
յընթերցման իւրէ արժանի։
Եւ որ տըրակ է արքայի,
մինչ առ ծառայս իւր առաքի։
Սա գեր 'ի վեր համարելի,
յանհամեմատ պատիճանի։
Տըրակ գոլով Տն Այ,
մեծաւ պատուով ընթեռնլի։
Այլ և հրամանն ընդ գրկելի.
զի բան Տնէ և լոյս բանի.
Յայգ և ցերեկ միշտ խոկալի.
լուսով նորին ընթանալի։
Խիճեալ մնաց միգապատի,
սա է ճրագ ըստ սաղմոսի։
Որ որ է հեղգ ունիլ զայս լոյս,
նա միշտ շրջի 'ի խաւարի։

Յայսմանէ իսկ հետևի բան,
թէ սա իցէ մեզ դեղ և կեան.
Այլև սնուցիչ արդարութեան.
և քարոզիչ ճշմարտութեան։
Նարուց կանոն ըեկ ուղղութեան.
ջահ կրօնի ռահ փրկութեան.
Բանից որք են ըզ հաւատոյ,
վճռատու անսխալական։
Աստուստ՝ որ է Տէրեան,
զըսկզբունս իւր առնու միայն.
Յարէ ըստ այնց և ըզ իւր բան.
որով լինի Տէրեան։
Համայնք իմաստք որք են բնական,
մինչ յըսկզբանց սորին զուրկ կան.
Ասին նոքին արձակաբար,
զուր աղճատմունք ունայնական։
Յորում սակայն իմաստութեան,
սա գտանի հանդոյն սկզբան.
Բամէ առ լոյս իւր զնորին բան,
զգիշերն առնէ հանդոյն տունջեան։
Կոչի այսու ինքըն միայն,
իմաստութիւն իմաստութեան.
Որ լուսաւոր առնէ զհամայնս՝
ճառագայթիւք ճշմարտութեան։
Զէ սա տկար որպ զայլ բան,
նշան և եթ այնց որք ենթ կան
Եւ իրքն յորժամ նշանեցան,
ոչ նշանիցեն զայլ ինչ բան։
Յուցանեն և սիրքն որք աստ կան,
զայլ ինչ բան խորհրդական։
Եւ այնու իսկ բազմապատկին՝
իմացուածք սբ գրոցն այսքան։
Լինի իմացուած որ նախնական.
ներքին կոչեցեալն այն.
Որ այլ երից է նշանական,
կոչեցելոյն իսկ հոգեկան։
Յորոց մին է բարոյական.
միւսըն կոչի այլաբանական.
Եւ իմացուածն այն խորհրդոց,
որ անուանի վերածական։
Սա է ուրեմն գեր քան զայլ բան,
որք 'ի մտաց մեր յառաջ գան.
Եւ նա զի է պարագրական,
իմացուածոց որք չորք եղան։
Յուցակ գոլով ինքըն եզական.
որք ցուցանին են յոդնական։
Եւ այս բընաւ իսկ չէր հընար,
եթէ չիցէր Այ բան։
Այսու հանդոյն է և նման,
գետոյ դրախտին եդեմական.
Այն և արձակ և մի միայն.
'ի չորս առաջս բաժանական։
Եւ և երկին եթերական,
քառից տարերց պարունական.
Իսկ մինչ կարգաւ պատասխանեն,
նկարագիրն հող հիմնական։

Գան և այլ բանք պարունակման,
Տեառն նոց գրոյն պատկան.
Որք մատծին 'ի գիտութեան,
զարմանաքանչ կարգն եղական։
Նման զի ունի է բընական.
այլ ունի սոսի գերբընական.
Եւ որ վերջին՝ բայցայայտ պայծառ,
է գիտութիւն երանական։
Սորին նախկին լոյսըն միայն,
նկարագրի իմացուածն այն
Տայ մեզ զիմաստն այն բընական.
Փիլիսոփական բարոյական։
Ապա զիմաստըն գերբնական.
առնօղն ըզմարդն Տէրեան.
Սիրով զյուսոյ և զհաւատոյ,
ուսուցանելն երանական։
Տայ սա յիւրում դասատուութեան,
աշակերտաց հնազանդութեան,
Ոգի և միտ դիւր ըմբռնման,
տեսականի ճշմարտութեան։
Խիստ է ընդ այնմ և զգործնական,
առնէ այնու ըզ փորձն ուսման.
Այնց որք գործով զայն կատարեն,
տայ զգաճազան բարբունական
Զաճալի սա գետոյ նման,
որոյ մէջն է խորին միայն.
Եւ նոյն գառինքն յեզրն ընթանան
իսկ փիղքն 'ի մէջն հարկիւ լողան
Հատնկրտին մեծ գիտունքն այլ
կանգնիլ 'ի մէջ խոր իմացման
Ոչ սակայն ոտք նոցին հըպին
խոր յատակին՝ վասն այն լողան
Խիծեղ գառինքն ըղձիւ տենչան
առ ժամանումն երանութ[եան],
Նուաճել դիւտեն զախտ ոճրին…
յանխոր եզեր տեղւոջ խայտա[ն]
Զոնին զմեծ փոյթ խոր իմաց…
մինչ ոչ ինքեանց պատշաճի այ…
Սիրով խրատուցն արդէն վայել…
զպիտոյս իւրեանց պարզ հասկնա…
Ուստի Տէր գիրքս այս Տնական,
որքան գիտնոց՝ գռեհկից այնքա[ն]
Խիստ է առկեանս զօգտակարբ…
ոչ արձակէ բնաւ զոք ունայ[ն]
Բամից որք են պատրաստական՝
ախտից իւրեանց մահացուցիչ…
Բացայայտէ զբան իւր նոցա,
որպէս ըզ լոյս արեգական։
Դովել ըզ սա բանիւք արժա[ն]
հոյլք իմաստնոց չեն բաւակ…
Բամից տամ զայս պարծանս միայն
վասըն զի է Այ բան։
Ուստի տացուք փառս օրհնութ[եան]
ամենայնի Երրորդութեան.
Յուցանողին զայսքան իւր մեծ
այժմ և յաւէտ և յաւիտեան Ամ